# ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

ՄԱՏԵԱՆ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

ԸՍՏ ՃՇԳՐԻՏ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽՆԵԱՑ ՄԵՐՈՑ

ՀԱՄԵՄԱՏՈՒԹԵԱՄԲ ԵԲՐԱՅԱԿԱՆ ԵՒ ՅՈՒՆԱԿԱՆ ԲՆԱԳՐԱՑ

معارف عموميه نظارت جليلهسنك ١١ ربيع الاول ٣١٣ و ٢٠ اغستوس ٣١١
تاريخلى و ٣٤٤ نومرولى رخصتنامهسيله طبع و نشر اولنمشدر

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Գ. ՊԱՂՏԱՍԼԵԱՆ



—

1895

# ՅԱՌԱՋԱԲԱՆ



Յընծայել մեր արդ ի լոյս զԱստուածաշունչ Մատեանս Հին եւ Նոր Կտակարանաց համեմատեալ զՀինն ընդ Եբրայական բնագրին, եւ զՆորն ընդ Յունականին, արժան համարիմք ասել ինչ ինչ համառօտիւ ի գիտութիւն ընթերցանելեաց, նախ՝ զպատճառացն վասն որոց եկաք յայս կարեւոր գործ, եւ երկրորդ՝ զհանգամանաց աշխատութեան մերոյ:

Զպատճառացն՝ շատ իցէ ասել կարճառօտիւ եթէ յառաջ քան զամս ինչ, բարեաց յիշատակաց արժանին Ներսէս Պատրիարք ոչ սակաւ ջան յանձն առնոյր հաւանեցուցանել զԸնկերութիւն Գրոց Սրբոց՝ տալ ի լոյս ընծայել եւ տարածել դիւրագին զԱստուածեղէն Մատեանն, զթարգմանեալն ի Հայ լեզու յերանելի հարցն մերոց ի Սահակայ եւ ի Մեսրոպայ:

Յետ բազում բանից որ եղեն երկուստեք, ոչ յաջողեցաւ գործն՝ մնայր առ ժամանակ մի: Արդարեւ չէր ինչ անյօժար Ընկերութիւնն կատարել զխնդիրն, այլ արգել այն էր, զի մին ի կանոնաց Ընկերութեանն էր ի լոյս ընծայել թարգմանութիւնս ի բնագիր լեզուաց Գրոյն: Եւ Հայերէն թարգմանութիւն Հին Կտակարանին, թէպէտ անհամեմատ գեղեցիկ եւ ընտիր, որպէս յայտ է, չեղեւ յԵբրայական բնագրէն, այլ ի Յոյն թարգմանութենէ: Առ ի բառնալոյ զայս դժուարութիւն, խորհուրդ արարեալ նշանաւորաց ումանց ի մերայոց, գտին այսպիսի ինչ հնարս. համեմատել զՀայերէն թարգմանութիւնն ընդ Եբրայականին՝ զայլակերպութիւնսն նշանակել ի լուսանցս ի ներքոյ իւրաքանչիւր էջի, պահել զՀայերէնն որպիսի էն:

Չեղեւ անհաճոյ Ընկերութեանն այս պայման, որով մարթ էր ազգին և՛ ստանալ դիւրագին զթարգմանութիւն իւրոց նախնեաց անեղծ եւ անարատ, և՛ լինել հմուտ հանգամանաց Եբրայական բնագրին ի ծանօթութեանց անտի որ ի լուսանցս: Ի հաճել Ընկերութեանն ընդ այս, կարգեցաւ ի Հայոց ուրոյն ժողով ի կատարել զայս գործ:

Իսկ զհանգամանացն՝ բաւական իցէ ասել զորս զկնի:

Վասն Հայերէն օրինակին, զորոյ զհետ գնացաք, ասեմք եթէ յաւագոյն համարեցաք չերթալ զհետ միոյ միայնոյ օրինակի, այլ որ ինչ մերձաւորագոյնն էր բնագրին զայն ընտրեցաք ի Հայերէն օրինակս անդ որ ցարդ ի լոյս ընծայեալ են:

Վասն ծանօթութեանց գիտել պարտ է զի ոչ եղեւ մեզ կամ գնել զամենայն որ այլակերպ էր ի բնագրաց անտի, այլ որ ինչ կարեւոր թուեցաւ մեզ: Թուի մեզ եթէ ճշմարտասէր ընթերցողն օժանդակեալ յորոց եդանն ի լուսանցս՝ մարթասցի քաջ հասու լինել մտաց աստուածատուր Մատենին, եւ ոչ կամիցի խստիւ դատել զմեզ վասն առաւելութեան կամ նուազութեան, որպէս եւ վասն հանգամանաց ծանօթութեանցն, զմտաւ ածեալ նախ՝ զի չէր ինչ դիւրին մուծանել իբրեւ երկոտասան հազարս ծանօթութեանց ի համեմատութենէ հնագոյն լեզուաց. երկրորդ ան-

զամ՝ զի աշխատութիւնս մեր է առաջին յազգի իւրում առ մեզ, առանց ունելոյ մեր ի ձեռին սմին նման գործ:

Գիտել պարտ է զի ի Հին Կտակարանի անդ ուր զՀայն գտաք այլակերպ յԵբրայականէն, ասացաք ի լուսանցս, Եբր., այսինքն՝ Եբրայեցերէն, այսպէս. եթէ գտաք ի Հայումս ինչ որ չգոյր յԵբրայական բնագրին, ասացաք, ՑԵբր., այսինքն՝ յԵբրայականին, *պակասէ*. եւ եթէ ի Հայումս պակասէր ինչ որ գոյր յԵբրայականին, ասացաք, *Եբրայեցին յաւելու*, եւ եդաք զաւելին: Ուր բանն յԵբրայականին յերկուս միտս հարկանէր, զերկրորդն եդաք ընդ բանիւ՝ *Կամ*: Ուր կարեւոր թուեցաւ մեզ դնել զնշանակութիւն անուան անձին կամ տեղւոյ եւ կամ այլոյ իրիք, եդաք զնշանակութիւնն ընդ բանիւ՝ *Այսինքն*: Միայն զանուանս անձանց եւ տեղեաց որ այլազգ հնչին յԵբրայականին, թողաք որպիսի են ի Հայերէնին:

Գիտել արժան է եւս, զի երբեմն յետ միանգամ կամ երկիցս դնելոյ ծանօթութիւն զբանից ինչ որ ստէպ կրկնին, զի մի՛ ծանրասցի գործն, բաւական համարեցաք ասել, *Այսպէս և այլուր*. կամ, *Այսպէս և ի Ներքոյ*. զոր օրինակ՝ յետ նուագս ինչ յուշ առնելոյ եթէ Տէր Տէրն ի մերում թարգմանութեան, յԵբրայականին է՝ *Տէր Եհովայ*, եւ անունն *Այլազգի* ի մերումն, յԵբրայականին է՝ *Փղշտացի*, յայլ եւս նուագս թողաք որպէս էին: Ակն ունիմք՝ եթէ շատ իցէ հանճարեղ ընթերցողին այսչափ ինչ ակնարկութիւն առ ի միտ առնուլ ինքնին ուր եւ հանդիպեսցի սոցին նման բանից:

Իսկ ի համեմատութեան Նորոյ Կտակարանի աշխատութիւն մեր չեղեւ այնպէս դժուարին, զի թարգմանութիւն նախնեաց մերոց էր ի բուն իսկ բնագրէ Նորոյ Կտակարանի: Ուստի փոյթ մեր եղեւ միայն համեմատել զայն ընդ ընտիր ընտիրս ի Յոյն ձեռագրաց որ ցարդ ծանօթ են, եւ նշանակել զայլակերպութիւնսն, որ ի հարկէ չկարէին լինել այնչափ բազում որչափ եղեն ի համեմատութեան Հնոյն:



# ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

## ՄԱՏԵԱՆ

### ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

# ԳԼՈՒԽՔ ԾՆՆԴՈՑ (*)



(*) Բովանդակութիւն գլխոց յամենայն գիրս դասաւորեալ յԵբրայականէն։

# ԾՆՈՒՆԴՔ

## ԳԼՈՒԽ Ա

1 Ի ՍԿԶԲԱՆԷ արար Աստուած զեր-
2 կին եւ զերկիր։ Եւ երկիր էր [1]աներեւ-
ոյթ եւ անպատրաստ", եւ խաւար ի
վերայ անդնդոց. եւ Հոգի Աստուծոյ
3 շրջէր ի վերայ ջուրց։ Եւ ասաց Աստուած,
4 Եղիցի լոյս. եւ եղեւ լոյս։ Եւ ետես
Աստուած զլոյսն զի բարի է. եւ մեկնեաց
Աստուած ի մէջ լուսոյն եւ ի մէջ խա-
5 ւարին։ Եւ կոչեաց Աստուած զլոյսն Տիւ,
եւ զխաւարն կոչեաց Գիշեր. եւ եղեւ
երեկոյ եւ եղեւ վաղորդայն, օր մի։
6 Եւ ասաց Աստուած, Եղիցի [2]հաստա-
տութիւն ի մէջ ջրոց, եւ եղիցի մեկ-
նել ի մէջ ջուրց եւ ջուրց. [3]եւ եղեւ
7 այնպէս" Եւ արար Աստուած [4]զհաստա-
տութիւնն, եւ անջրպետեաց Աստուած
ի մէջ ջրոյն որ ի ներքոյ [5]հաստատու-
թեանն, եւ ի մէջ ջրոյն որ ի վերոյ [5]հաս-
8 տատութեանն[6]։ Եւ կոչեաց Աստուած
[4]զհաստատութիւնն Երկինս. եւ եղեւ ե-
րեկոյ եւ եղեւ վաղորդայն, օր երկրորդ։
9 Եւ ասաց Աստուած, Ժողովեսցին
ջուրքդ որ ի ներքոյ երկնից ի ժողով
մի, եւ երեւեսցի ցամաքն. եւ եղեւ
այնպէս։ [3]Եւ ժողովեցան ջուրքն որ ի
ներքոյ երկնից՝ ի ժողովս իւրեանց, եւ
10 երեւեցաւ ցամաքն ։" Եւ կոչեաց Աս-
տուած զցամաքն Երկիր, եւ զժողովս
ջուրցն կոչեաց Ծովս. եւ ետես Աստուած
11 զի բարի է։ Եւ ասաց Աստուած, Բղխես-
ցէ երկիր զբանջար խոտոյ, [7]սերմանել
սերմն ըստ ազգի եւ ըստ նմանութեան.
եւ" ծառ պտղաբեր՝ առնել պտուղ ըստ
ազգի իւրում, որոյ սերմն իւր ի նմին
[3]ըստ ազգի ի նմանութիւն" ի վերայ
12 երկրի. եւ եղեւ այնպէս։ Եւ եհան եր-
կիր բանջար խոտոյ, [8]սերմանել սերմն
որ է ի վերայ ամենայն երկրի". եւ փայտ
պտղաբեր՝ առնել պտուղ որոյ սերմն իւր
ի նմին ըստ ազգի [3]ի վերայ երկրի". եւ
13 ետես Աստուած զի բարի է։ Եւ եղեւ
երեկոյ եւ եղեւ վաղորդայն, օր երրորդ։
14 Եւ ասաց Աստուած, Եղիցին լու-
սաւորք [9]ի հաստատութեան երկնից,
[3]ի լուսաւորութիւն ի վերայ երկրի, եւ"
մեկնել ի մէջ տունջեան եւ ի մէջ գի-
շերոյ. եւ եղիցին ի նշանս եւ ի ժամա-
15 նակս եւ յաւուրս եւ ի տարիս. Եւ ե-
ղիցին ի լուսաւորութիւն [9]ի հաստատու-
թեան երկնից ծագել յերկիր. եւ եղեւ
16 այնպէս։ Եւ արար Աստուած զերկուս
լուսաւորսն զմեծամեծս. զլուսաւորն
մեծ յիշխանութիւն տունջեան, եւ զլու-
սաւորն փոքր յիշխանութիւն գիշերոյ,
17 եւ զաստեղս։ Եւ եդ զնոսա Աստուած
[9]ի հաստատութեան երկնից լուսաւոր լի-
18 նել յերկիր, Եւ իշխել տունջեան եւ
գիշերոյ, եւ մեկնել ի մէջ լուսոյն եւ
ի մէջ խաւարին. եւ ետես Աստուած
19 զի բարի է։ Եւ եղեւ երեկոյ եւ եղեւ
վաղորդայն, օր չորրորդ։
20 Եւ ասաց Աստուած, Հանցեն ջուրք
զեռունս շնչոց կենդանեաց, եւ թռչունս
թեւաւորս ի վերայ երկրի ըստ [10]հաստա-
տութեան երկնից. [3]եւ եղեւ այնպէս։"
21 Եւ արար Աստուած [11]կէտս մեծամեծս,
եւ զամենայն շունչ զեռնոց կենդանեաց՝
զոր հանին ջուրք ըստ ազգի իւրեանց,
եւ զամենայն թռչունս թեւաւորս ըստ
ազգի. եւ ետես Աստուած զի բարի են։
22 Եւ օրհնեաց զնոսա Աստուած եւ ասէ,
Աճեցէք եւ բազմացարուք, եւ լցէք
զջուրս որ ի ծովս. եւ թռչունք բազ-
23 մասցին ի վերայ երկրի։ Եւ եղեւ երեկոյ
եւ եղեւ վաղորդայն, օր հինգերորդ։
24 Եւ ասաց Աստուած, Հանցէ երկիր
շունչ կենդանի ըստ ազգի, չորքոտանի
եւ սողունս եւ գազանս երկրի ըստ ազ-
25 գի. եւ եղեւ այնպէս։ Եւ արար Աստ-
ուած զգազանս երկրի ըստ ազգի, եւ

[1]Եբրայեցերէն, ամայի և թափուր [2]Եբր. տարածութիւն [3]Եբրայականին պակասէ [4]Եբր. զտարածութիւնն [5]Եբր. տարածութեանն [6]Եբրայեցին յաւելու, և եղև այնպէս [7]Եբր. խոտ՝ որ առնէ սերմն, [8]Եբր. խոտ՝ որ առնէ սերմն ըստ ազգի իւրում

[9]Եբր. ի տարածութեան [10]երեսաց տարածութեան [11]Եբր. զկէտսն

զանասունս ըստ ազգի, եւ զամենայն
սողունս երկրի ըստ ազգի իւրեանց. եւ
ետես Աստուած զի բարի են։
26 Եւ ասաց Աստուած, Արասցուք մարդ
ըստ պատկերի մերում եւ ըստ նմա-
նութեան, եւ իշխեսցեն ձկանց ծովու
եւ թռչնոց երկնից եւ անասնոց եւ ամե-
նայն երկրի եւ ամենայն սողնոց որ սո-
27 ղին ի վերայ երկրի։ Եւ արար Աստուած
զմարդն ի պատկեր իւր. ըստ պատկե-
րի Աստուծոյ արար զնա, արու եւ էգ
28 արար զնոսա։ Եւ օրհնեաց զնոսա Աս-
տուած եւ [1]ասէ, Աճեցէք եւ բազմացա-
րուք եւ լցէք զերկիր, եւ տիրեցէք դմա,
եւ իշխեցէք ձկանց ծովու եւ թռչնոց
երկնից եւ ամենայն [2]անասնոց եւ ամե-
նայն երկրի եւ ամենայն սողնոց" որ սո-
ղին ի վերայ երկրի։
29 Եւ ասաց Աստուած, Ահաւադիկ տուեալ
ձեզ զամենայն խոտ [3]սերմանելի՝ սերմա-
նել" սերմն, որ է ի վերայ ամենայն երկ-
րի, եւ զամենայն փայտ որ ունիցի յին-
քեան պտուղ սերման սերմանելոյ՝ ձեզ
30 լիցի ի կերակուր։ Եւ ամենայն գազա-
նաց երկրի, եւ ամենայն թռչնոց երկ-
նից, եւ ամենայն սողնոց որ սողին ի
վերայ երկրի՝ որ ունիցի շունչ կենդանի,
ամենայն խոտ դալար ի կերակուր. եւ
31 եղեւ այնպէս։ Եւ ետես Աստուած զա-
մենայն զոր արար, եւ ահա բարի են
յոյժ. եւ եղեւ երեկոյ եւ եղեւ վաղոր-
դայն, օր վեցերորդ։

## ԳԼ. Բ

1 Եւ կատարեցան երկինք եւ երկիր եւ
2 ամենայն զարդ նոցա։ Եւ կատարեաց
Աստուած յաւուրն [4]վեցերորդի զգործս
իւր զոր արար, եւ հանգեաւ յաւուրն
եւթներորդի յամենայն գործոց իւրոց զոր
3 արար։ Եւ օրհնեաց Աստուած զօրն եւթ-
ներորդ եւ սրբեաց զնա, զի ի նմա հան-
գեաւ յամենայն գործոց իւրոց զոր սկսաւ
առնել Աստուած։
4 Այս [5]է գիր արարածոց" երկնի եւ [6]երկ-
րի յաւուր յորում արար Աստուած զեր-
5 կինս եւ զերկիր, Եւ զամենայն բանջար
վայրի՝ մինչչեւ լեալ էր ի վերայ երկ-
րի, եւ զամենայն խոտ վայրի մինչչեւ
բուսեալ էր, զի չեւ եւս էր տեղացեալ
Տեառն Աստուծոյ ի վերայ երկրի. եւ
6 մարդ չէր որ գործէր զերկիր։ Բայց
[7]աղբեւր ելանէր յերկրէ եւ ռոգանէր
7 զամենայն երեսս երկրի։ Եւ ստեղծ Տէր
Աստուած զմարդն հող յերկրէ. եւ փչեաց
[8]յերեսս նորա շունչ կենդանի, եւ եղեւ
մարդն յոգի կենդանի։
8 Եւ տնկեաց [9]Աստուած դրախտն"
յԵդեմ ընդ արեւելս, եւ եդ անդ զմարդն
9 զոր ստեղծ։ Եւ բուսոյց եւս Տէր Աս-
տուած յերկրէ զամենայն ծառ գեղեցիկ
ի տեսանել եւ քաղցր ի կերակուր, եւ
զծառն կենաց ի մէջ դրախտին, եւ
զծառն գիտելոյ զգիտութիւն բարւոյ եւ
10 չարի։ Եւ գետ ելանէր յԵդեմայ ռոգա-
նել զդրախտն. եւ անտի բաժանի ի չորս
11 առաջս։ Անուն միումն Փիսոն. նա է
որ պատէ զամենայն երկիրն Եւիլատայ,
12 անդ ուր ոսկին է, Եւ ոսկի երկրին այ-
նորիկ ազնիւ. եւ անդ է սուտակն եւ
13 ակն դահանակ։ Եւ անուն գետոյն երկ-
րորդի Գեհոն. նա պատէ զամենայն եր-
14 կիրն [10]Եթովպացւոց։ Եւ գետն երրորդ՝
Տիգրիս, նա է որ երթայ [11]յանդիման Ա-
սորեստանի։ Եւ գետն չորրորդ Եփրա-
15 տէս։ Եւ առ Տէր Աստուած զմարդն զոր
արար, եւ եդ զնա ի դրախտին [12]փափ-
16 կութեան գործել զնա եւ պահել։ Եւ
պատուիրեաց Տէր Աստուած Ադամայ եւ
ասէ, Յամենայն ծառոց որ է ի դրախ-
17 տիդ՝ ուտելով կերիցես. Բայց ի ծա-
ռոյն գիտութեան բարւոյ եւ չարի՝ մի
[13]ուտիցէք, զի յորում աւուր [13]ուտիցէք
ի նմանէ" մահու [14]մեռանիջիք։
18 Եւ ասաց Տէր Աստուած, Ոչ է բար-
ւոք մարդոյդ միայն լինել, [15]արասցուք
19 դմա օգնական ըստ դմա։ Եւ ստեղծ եւս
Տէր Աստուած[16] զամենայն գազանս վայ-
րի եւ զամենայն թռչունս երկնից. եւ
ած զնոսա առ Ադամ տեսանել զինչ
կոչեսցէ զնոսա. եւ ամենայն շնչոյ
կենդանւոյ զինչ եւ անուանեաց Ադամ,
20 այն անուն է նորա։ Եւ կոչեաց Ադամ
անուանս ամենայն անասնոց, եւ ամենայն
թռչնոց երկնից, եւ ամենայն գազանաց
վայրի. բայց Ադամայ ոչ գտաւ օգնա-

[1]Եբր. ասէ ցնոսա Աստուած [2]Եբր. կենդանեաց [3]Եբր. որոյ է [4]Եբր. եւթներորդի [5]Եբր. են ծնունդք [6]Եբր. երկրի, յորժամ արարան նոքա,

[7]Եբր. շոգի [8]Եբր. յռնգունս [9]Եբր. Տէր Աստուած դրախտ [10]Եբր. Քուշայ [11]Կամ, յարեւելս [12]Եբր. Եդեմայ [13]Եբր. ուտիցես ի նմանէ [14]Եբր. մեռանիցիս [15]Եբր. արարից [16]Եբրայեցին յաւելու, ի հողոյ

21 կան նման նմա ։ Եւ արկ Տէր Աստուած
թմբրութիւն ի վերայ Ադամայ , եւ
ննջեաց . եւ առ մի ի կողից նորա եւ ե-
22 լից ընդ այնր մարմին . Եւ շինեաց Տէր
Աստուած զկողն զոր առ յԱդամայ ի
23 կին , եւ ած զնա առ Ադամ ։ Եւ ասէ
Ադամ , Այս այժմիկ ոսկր յոսկերաց ի-
մոց եւ մարմին ի մարմնոյ իմմէ . սա
կոչեսցի [1]կին , զի [2]յառնէ [3]իւրմէ ա-
24 ռաւ ։ Վասն այնորիկ թողցէ այր զհայր
իւր եւ զմայր իւր , եւ երթիցէ զհետ
կնոջ իւրոյ , եւ եղիցին երկոքեան ի մար-
25 մին մի ։ Եւ էին երկոքեան մերկ , Ադամ
եւ կին իւր , եւ ոչ ամաչէին ։

## ԳԼ. Գ

1 Եւ օձն էր [4]իմաստնագոյն քան զամենայն
գազանս [5]որ ի վերայ երկրի" զոր արար
Տէր Աստուած . եւ ասէ օձն ցկինն, [6]Զի՞ է
զի ասաց" Աստուած թէ Յամենայն ծա-
ռոց որ կայեն ի ներքս ի դրախտի այդր՝ մի
2 ուտիցէք ։ Եւ ասէ կինն ցօձն , Ի պտղոյ
3 ծառոց դրախտիդ կերիցուք . Բայց ի
պտղոյ ծառոյն՝ որ է ի մէջ դրախտին , ա-
սաց Աստուած , Մի՛ ուտիցէք ի նմանէ ,
եւ մի՛ հուպ լինիցիք , զի մի՛ մեռանի-
4 ցիք ։ Եւ ասէ օձն ցկինն , Ոչ եթէ մահու
5 մեռանիցիք . Զի գիտէր Աստուած թէ
յորում աւուր ուտիցէք ի նմանէ , բա-
նայցին աչք ձեր , եւ լինիցիք իբրեւ
զաստուածս՝ ճանաչել զբարի եւ զչար ։
6 Եւ ետես կինն զի բարի էր ծառն ի
կերակուր եւ հաճոյ աչաց հայելոյ , եւ
[7]գեղեցիկ ի տեսանել". եւ առ ի պտղոյ
նորա , եկեր . եւ ետ առն իւրում ընդ
7 իւր , եւ [8]կերան ։ Եւ բացան աչք եր-
կոցունց , եւ գիտացին զի մերկ էին . եւ
կարեցին տերեւս թզենւոյ , եւ արարին
8 իւրեանց սփածանելիս ։ Եւ լուան զձայն
զգնացոյ Տեառն Աստուծոյ ի դրախտի
անդ ընդ երեկս , եւ թաքեան Ադամ եւ
կինն իւր յերեսաց Տեառն Աստուծոյ ի
9 մէջ ծառոց դրախտին ։ Եւ կոչեաց Տէր
Աստուած զԱդամ , եւ ասէ ցնա , Ո՞ւր
10 ես ։ Եւ ասէ , Լուայ զձայն քո ի դրախ-
տի աստ եւ երկեայ , քանզի մերկ էի ,
11 եւ թաքեայ ։ Եւ ասէ ցնա , Ո՞ պատ-
մեաց քեզ թէ մերկ ես . բայց եթէ ի
ծառոյն յորմէ պատուիրեցի քեզ անտի
[3]եւեթ չուտել , կերա՞ր արդեւք ի նմա-
12 նէ ։ Եւ ասէ Ադամ , Կինս զոր ետուր
ընդ իս՝ նա ետ ինձ ի ծառոյ անտի եւ
13 կերայ ։ Եւ ասէ Տէր Աստուած ցկինն ,
Զի՞նչ գործեցեր զայդ . եւ ասէ կինն ,
14 Օձն խաբեաց զիս , եւ կերայ ։ Եւ ասէ
Տէր Աստուած ցօձն , Փոխանակ զի ա-
րարեր զայդ , անիծեալ լիջիր դու յա-
մենայն անասնոց եւ յամենայն գազա-
նաց երկրի . ի վերայ [3]լանջաց եւ" որո-
վայնի քո գնասցես , եւ հող կերիցես
15 զամենայն աւուրս կենաց քոց ։ Եւ ե-
դից թշնամութիւն ի մէջ քո եւ ի մէջ
կնոջդ , եւ ի մէջ զաւակի քո եւ ի մէջ
զաւակի նորա . նա [9]սպասեսցէ քում
գլխոյ . եւ դու սպասեսցես նորա գար-
16 շապարի" ։ Եւ ցկինն ասէ , Բազմացու-
ցանելով բազմացուցից զտրտմութիւնս
քո եւ [10]զհեծութիւնս քո. տրտմութեամբ
ծնցես որդիս , եւ առ այր քո [11]դարձ քո ,
17 եւ նա տիրեսցէ քեզ ։ Եւ ցԱդամ ասէ ,
Փոխանակ զի լուար ձայնի կնոջդ քո ,
եւ կերար ի ծառոյ անտի յորմէ պա-
տուիրեցի քեզ անտի [3]միայն չուտել , [3]եւ
կերար ի նմանէ ," անիծեալ լիցի երկիր
[12]ի գործս քո . տրտմութեամբ կերիցես
զնա զամենայն աւուրս կենաց քոց .
18 Փուշ եւ տատասկ բուսուսցէ քեզ , եւ
19 կերիցես զբանջար վայրի ։ Քրտամբք ե-
րեսաց քոց կերիցես զհաց քո , մինչեւ
դարձցիս յերկիր ուստի առար . զի հող
էիր եւ ի հող դարձցիս ։
20 Եւ կոչեաց Ադամ զանուն կնոջ իւրոյ
Կեանս . զի նա է մայր ամենայն կեն-
21 դանեաց ։ Եւ արար Տէր Աստուած Ա-
դամայ եւ կնոջ նորա հանդերձս մաշկե-
22 ղէնս , եւ զգեցոյց զնոսա ։ Եւ ասէ Տէր
Աստուած , Ահա Ադամ եղեւ իբրեւ զմի
ի մէնջ՝ գիտել զբարի եւ զչար . եւ արդ
զուցէ ձգիցէ զձեռն եւ առնուցու ի ծա-
ռոյն կենաց , ուտիցէ եւ կեցցէ յաւիտ-
23 եան ։ Եւ եհան արձակեաց զնա Տէր
Աստուած ի դրախտէ անտի [13]փափկու-
24 թեան՝ գործել զերկիր ուստի առաւ ։ Եւ
եհան զԱդամ , եւ բնակեցոյց յանդիման
դրախտին [14]փափկութեան. եւ հրամայեաց
քերովբէից եւ բոցեղէն սրոյ" շուրջանա-
կաւ պահել զճանապարհս ծառոյն կենաց ։

---

[1]Եբր. Իշշա [2]Եբր. Իշ [3]Եբր. լոքոհ [4]Եբր. խո-րագէտ [5]Եբր. վայրի [6]Եբր. Արդարեւ ասա՞ց [7]Կամ, ցանկալի յառնել իմաստուն [8]Եբր. կերաւ

[9]Եբր. խորտակեսցէ զգլուխ քո , եւ դու խորտակեսցես զգարշապար նորա [10]Կամ, զերկունս [11]Եբր. ցանկութիւն [12]Եբր. վասն [13]Եբր. Եդեմայ [14]Եբր. Եդեմայ զքերոբէս և զբոցեղէն սուրն

ԳԼ. Դ

1 Եմուտ Ադամ առ Եւայ կին իւր, եւ
յղացաւ եւ ծնաւ զԿային. եւ ասէ, Ստա-
2 ցայ մարդ [1]Աստուծով: Եւ յաւել ծնա-
նել զեղբայր նորա զՀաբէլ. եւ եղեւ
Հաբէլ հովիւ խաշանց, եւ Կային գոր-
3 ծէր զերկիր: Եւ եղեւ յետ աւուրց ե-
բեր Կային ի պտղոյ երկրի պատարագ
4 [2]Աստուծոյ. Ած եւ Հաբէլ յանդրանկաց
խաշանց իւրոց եւ ի պարարտաց նոցա.
եւ հայեցաւ [3]Աստուած ի Հաբէլ եւ ի
5 պատարագս նորա, Եւ ի Կային եւ ի
զոհս նորա ոչ նայեցաւ. եւ տրտմեցաւ
Կային յոյժ, եւ խոնարհեցան անկան ե-
6 րեսք նորա: Եւ ասէ Տէր [4]Աստուած ցԿա-
յին, Ընդէ՞ր [5]տրտմեցար, եւ ընդէ՞ր խո-
7 նարհեցան անկան երեսք քո. Ո՞չ ապա-
քէն եթէ [6]ուղիղ մատուցանես, եւ ու-
ղիղ ոչ բաժանես՝ մեղար. լուռ լեր,
առ քեզ լիցի դարձ" նորա, եւ դու տի-
րեսցես նմա:
8 Եւ [7]ասէ Կային ցՀաբէլ եղբայր իւր,
Եկ երթիցուք ի դաշտ". եւ եղեւ ի-
րեւ չոգան ի դաշտ անդր, յարեաւ Կային
ի վերայ Հաբելի եղբօր իւրոյ եւ սպան
9 զնա: Եւ ասէ Տէր [4]Աստուած ցԿային,
Ո՞ւր է Հաբէլ եղբայր քո: Եւ նա ասէ,
Զգիտեմ. միթէ պահապա՞ն իցեմ եղբօրն
10 իմոյ: Եւ ասէ Աստուած, Զի՞նչ գոր-
ծեցեր զայդ. գոչումն արեան եղբօր քո
11 բողոքէ առ իս յերկրէ. Եւ արդ անիծ-
եալ լիջիր դու ի վերայ երկրի, որ եբաց
զբերան իւր ընդունել զարիւն եղբօր քո
12 ի ձեռաց քոց. Զի գործեսցես զերկիր,
եւ ոչ յաւելցէ տալ քեզ զզօրութիւն
իւր. երերեալ եւ տատանեալ եղիցես
13 ի վերայ երկրի: Եւ ասէ Կային ցՏէր [4]Աս-
տուած, Մեծ է պատիժ իմ քան [8]զթո-
14 ղուլ զիս". [9]Եթէ հանես" զիս այսօր
յերեսաց երկրէ, եւ յերեսաց քոց թա-
քեայց. եւ լինիցիմ երերեալ եւ տատա-
նեալ յերկրի, եւ եղիցի ամենայն որ
15 գտանիցէ զիս՝ սպանցէ զիս: Եւ ասէ
ցնա Տէր [4]Աստուած, Ոչ այդպէս. ամե-
նայն որ սպանանէ զԿային, եւթն վրէժս
լուծցէ. եւ եդ Տէր [4]Աստուած նշան ի
Կային՝ չսպանանել զնա ամենայնի որ
գտանիցէ զնա:
16 Եւ ել Կային յերեսաց [10]Աստուծոյ, եւ
բնակեցաւ յերկրին Նայիդ յանդիման Ե-
17 դեմայ: Եմուտ Կային առ կին իւր, եւ
յղացաւ եւ ծնաւ զԵնովք. եւ շինէր քա-
ղաք, եւ դնէր անուն քաղաքին յանուն
18 որդւոյ իւրոյ Ենովքայ: Եւ եղեւ որդի
Ենովքայ Գայերիդադ, եւ Գայերիդադ
ծնաւ զՄայիէլ, եւ Մայիէլ ծնաւ զՄա-
թուսաղա, եւ Մաթուսաղա ծնաւ զՂա-
19 մէք: Եւ առ իւր Ղամէք երկուս կա-
նայս. անուն միումն Ադդա, եւ անուն
20 երկրորդին Սէլլա. Եւ ծնաւ Ադդա զՅով-
բէլ. նա է հայր այնոցիկ որ բնակեալ
21 են ի վրանս խաշնարածաց. Եւ անուն
եղբօր նորա Յովբաղ. նա է հայր որ ե-
22 ցոյց զերգս եւ զքնարս: Եւ Սէլլա ծնաւ
զԹովբէլ, եւ էր ճարտարապետ դարբին՝
պղնձոյ եւ երկաթոյ. եւ քոյր Թովբե-
23 լայ Նոյեմա: Եւ ասէ Ղամէք ցկանայս
իւր ցԱդդա եւ ցՍէլլա, Լուարուք ձայ-
նի իմում, կանայք Ղամեքայ, եւ ունկն
դիք բանից իմոց. զի այր սպանի ի
վէրս ինձ, եւ երիտասարդ՝ ի հարուածս
24 ինձ. Զի թէ եւթն անգամ վրէժք
խնդրիցին ի Կայենէ, ապա եւ ի Ղա-
մեքայ եւթանասնեկին եւթն:
25 Եմուտ Ադամ առ Եւայ կին իւր, եւ
յղացաւ եւ ծնաւ որդի, եւ անուանեաց
զանուն նորա Սէթ. ասէ, Զի յարոյց
ինձ Աստուած զաւակ այլ՝ փոխանակ
26 Հաբելի զոր սպանն Կային: Եւ Սեթայ
եղեւ որդի, եւ անուանեաց զանուն նո-
րա Ենովս. [11]նա յուսացաւ կոչել զանուն
Տեառն Աստուծոյ":

ԳԼ. Ե

1 Այս է գիր [12]արարածոց մարդկան",
յաւուր յորում արար Աստուած զԱդամ,
ըստ պատկերի Աստուծոյ ստեղծ զնա.
2 Արու եւ էգ արար զնոսա, եւ օրհնեաց
զնոսա, եւ անուանեաց զանուն նոցա
[13]ադամ, յաւուր յորում արար զնոսա:
3 Եկեաց Ադամ ամս [14]երկերիւր եւ ե-
րեսուն, եւ ծնաւ ըստ կերպարանաց
իւրոց եւ ըստ պատկերի իւրում, եւ

---

[1]Եբր. Տերամբ [2]Եբր. Տեառն [3]Եբր. Տէր [4]Եբր. [illegible] [5]Եբր. բարկացար [6]Եբր. բարւոք գործես, եղիցի ընդունելի. և եթէ բարւոք ոչ գործիցես, մեղք (Յոյն. պատարագ մեղաց) կռնաւ դուրս. և առ քեզ լիցի ցանկութիւն [7]Եբր. խօսեցաւ Կային առ Հաբէլ եղբայր իւր [8]Եբր. զկար իմ Յոյն. զներել թողութեան [9]Եբր. Ահա հաներ

[10]Եբր. Տեառն [11]Եբր. յայնժամ սկիզբն եղեւ կոչելոյ յանուն Տեառն [12]Եբր. ծննդոց Ադամայ [13]Այսինքն, մարդ [14]Եբր. հարիւր

4 ամաւամեայ զանուն նորա Սէթ ։ Եւ ե-
ղեն աւուրք Ադամայ յետ ծնանելոյ նո-
րա զՍէթ ամք [1]եւթն հարեւր , եւ ծնաւ
5 ուստերս եւ դստերս ։ Եւ եղեն ամենայն
աւուրք Ադամայ զորս եկեաց՝ ամք ինն
հարեւր եւ երեսուն , եւ մեռաւ ։
6 Եւ եկեաց Սէթ ամս [2]երկերիւր եւ հինգ ,
7 եւ ծնաւ զԵնովս ։ Եւ եկեաց Սէթ յետ
ծնանելոյ նորա զԵնովս ամս [1]եւթն հարեւր
եւ եւթն , եւ ծնաւ ուստերս եւ դստերս ։
8 Եւ եղեն ամենայն աւուրք Սեթայ ամք
ինն հարեւր եւ երկոտասան , եւ մեռաւ ։
9 Եւ եկեաց Ենովս ամս [3]հարեւր եւ"
10 իննսուն , եւ ծնաւ զԿայնան ։ Եւ եկեաց
Ենովս յետ ծնանելոյ նորա զԿայնան
ամս [1]եւթն հարեւր եւ հնգետասան , եւ
11 ծնաւ ուստերս եւ դստերս ։ Եւ եղեն ա-
մենայն աւուրք Ենովսայ ամք ինն հա-
րեւր եւ հինգ , եւ մեռաւ ։
12 Եւ եկեաց Կայնան ամս [3]հարեւր եւ"
եւթանասուն , եւ ծնաւ զՄաղաղայէլ ։
13 Եւ եկեաց Կայնան յետ ծնանելոյ նորա
զՄաղաղայէլ ամս [1]եւթն հարեւր եւ քա-
ռասուն , եւ ծնաւ ուստերս եւ դստերս ։
14 Եւ եղեն ամենայն աւուրք Կայնանայ
ամք ինն հարեւր եւ տասն , եւ մեռաւ ։
15 Եւ եկեաց Մաղաղայէլ ամս [3]հարեւր
եւ" վաթսուն եւ հինգ , եւ ծնաւ զՅարեդ ։
16 Եւ եկեաց Մաղաղայէլ յետ ծնանելոյ նորա
զՅարեդ ամս [1]եւթն հարեւր եւ երեսուն ,
17 եւ ծնաւ ուստերս եւ դստերս ։ Եւ եղեն
ամենայն աւուրք Մաղաղայելի ամք ութ
հարեւր եւ իննսուն եւ հինգ , եւ մեռաւ ։
18 Եւ եկեաց Յարեդ ամս հարեւր եւ
վաթսուն եւ երկու , եւ ծնաւ զԵնովք ։
19 Եւ եկեաց Յարեդ յետ ծնանելոյ նորա
զԵնովք՝ ամս ութ հարեւր , եւ ծնաւ
20 ուստերս եւ դստերս ։ Եւ եղեն ամենայն
աւուրք Յարեդի ամք ինն հարեւր վաթ-
սուն եւ երկու , եւ մեռաւ ։
21 Եւ եկեաց Ենովք ամս [3]հարեւր վաթ-
սուն եւ հինգ , եւ ծնաւ զՄաթուսա-
22 ղա ։ Եւ [4]հաճոյ եղեւ Ենովք" Աստու-
ծոյ յետ ծնանելոյ նորա զՄաթուսաղա՝
ամս [5]երկերիւր ։ եւ ծնաւ ուստերս եւ
23 դստերս ։ Եւ եղեն ամենայն աւուրք Ե-
նովքայ ամք երեք հարեւր եւ վաթսուն
24 եւ հինգ ։ Եւ [4]հաճոյ եղեւ Ենովք" Աս-
տուծոյ ։ եւ ոչ ուրեք գտանէր , զի փո-
խեաց զնա Աստուած ։
25 Եւ եկեաց Մաթուսաղա ամս հարեւր
ութսուն եւ եւթն , եւ ծնաւ զՂամէք ։
26 Եւ եկեաց Մաթուսաղա յետ ծնանելոյ
նորա զՂամէք ամս եւթն հարեւր ութ-
սուն եւ երկու , եւ ծնաւ ուստերս եւ
27 դստերս ։ Եւ եղեն ամենայն աւուրք
Մաթուսաղայի զորս եկեաց՝ ամք ինն
հարեւր վաթսուն եւ ինն , եւ մեռաւ ։
28 Եւ եկեաց Ղամէք ամս հարեւր ութ-
29 սուն եւ [6]ութ , եւ ծնաւ որդի ։ Եւ ա-
նուանեաց զանուն նորա [7]Նոյ ։ ասէ ,
Սա հանգուսցէ զմեզ ի գործոց մերոց
եւ ի տրտմութենէ ձեռաց մերոց , [3]եւ
30 յերկրէ զոր անէծ Տէր Աստուած ։ Եւ
եկեաց Ղամէք յետ ծնանելոյ նորա զՆոյ՝
ամս հինգ հարեւր եւ [8]վաթսուն եւ հինգ ,
31 եւ ծնաւ ուստերս եւ դստերս ։ Եւ ե-
ղեն ամենայն աւուրք Ղամեքայ ամք
եւթն հարեւր [9]յիսուն եւ երեք" , եւ մե-
32 ռաւ ։ Եւ էր Նոյ ամաց հինգ հարիւրից ,
եւ ծնաւ Նոյ [3]երիս որդիս ," զՍէմ ,
զՔամ , եւ զՅաբեթ ։

## ԳԼ. Զ

1 Եւ եղեւ իբրեւ սկսան մարդիկն բազ-
մանալ ի վերայ երկրի , եւ դստերք
2 ծնան նոցա , Տեսեալ որդւոցն Աստուծոյ
զդստերս մարդկան զի գեղեցիկ էին ,
առին իւրեանց կանայս յամենեցունց զոր
3 ընտրեցին ։ Եւ ասէ Տէր [3]Աստուած , Մի՛
մնասցէ ոգի իմ ի մարդկանս յայսմիկ
յաւիտեան , վասն լինելոյ զոցա մարմին .
եւ եղիցին աւուրք զոցա ամք հարեւր
4 քսան ։ Եւ սկայք էին ի վերայ երկրի
յաւուրսն յայնոսիկ . եւ յետ այնորիկ
իբրեւ մտանէին որդիքն Աստուծոյ առ
դստերսն մարդկան , եւ ծնան [10]իւրեանց
որդիս , նոքա էին սկայքն որ յաւիտե-
5 նից արք անուանիք ։ Եւ իբրեւ ետես
Տէր [3]Աստուած եթէ բազմացան չարիք
մարդկան ի վերայ երկրի , եւ ամենայն
ոք խորհէր ի սրտի իւրում խնամով ի
6 չարիս զամենայն աւուրս , Եւ տրտմեցաւ
[11]Աստուած զի արար զմարդն ի վերայ երկ-
րի , եւ մտախոհ եղեւ ի սրտի իւրում ,
7 Եւ ասէ Տէր [3]Աստուած , Ջնջեցից [12]զա-
մենայն մարմին" զոր արարի յերեսաց

---

[1] Եբր. ութ [2] Եբր. հարեւր [3] Եբր. պ—կ—է
[4] Եբր. գնաց Ենովք ընդ [5] Եբր. երեք հարեւր
[6] Եբր. երկու [7] Այսինքն, հանգիստ [8] Եբր. իննսուն
[9] Եբր. եւթանասուն և եւթն [10] Եբր. նոցա
[11] Եբր. Տէր [12] Եբր. զմարդն

երկրէ, ի մարդոյ մինչեւ յանասուն, եւ
ի սողնոց մինչեւ ի թռչունս երկնից, զի
8 [1]բարկացայ զի արարի զնոսա։ Բայց Նոյ
եգիտ շնորհս առաջի Տեառն [2]Աստուծոյ։
9 Եւ այս են ծնունդք Նոյի. Նոյ այր ար-
դար կատարեալ էր յազգի անդ իւրում.
10 եւ [3]հաճոյ եղեւ Նոյ" Աստուծոյ։ Եւ
ծնաւ Նոյ երիս որդիս, զՍէմ, զՔամ,
11 զՅաբէթ։ Եւ ապականեցաւ երկիր առաջի
Աստուծոյ, եւ լցաւ երկիր անիրաւու-
12 թեամբ։ Եւ ետես [2]Տէր Աստուած զեր-
կիր, եւ էր ապականեալ. զի ապակա-
նեաց ամենայն մարմին զճանապարհ իւր
13 ի վերայ երկրի։ Եւ ասէ [2]Տէր Աստուած
ցՆոյ, [4]Ժամանակ ամենայն մարդոյ"
հասեալ է առաջի իմ, զի լցաւ երկիր
անիրաւութեամբք ի նոցանէ. եւ ահա
ես ապականեցից զնոսա եւ զերկիր։
14 Արդ արա դու քեզ տապան ի [5]չորեք-
կուսի փայտից. խորշս խորշս գործես-
ցես զտապանն, եւ նաւթիւ ծեփեսցես
15 զնա ներքոյ եւ արտաքոյ։ Եւ այսպէս ա-
րասցես զտապանն. յերեք հարեւր կանգ-
նոյ զերկայնութիւն տապանին, եւ ի յի-
սուն կանգնոյ զլայնութիւնն, եւ յերե-
16 սուն կանգնոյ զբարձրութիւնն։ [6]Քողե-
լով գործեսցես զտապանն", եւ ի մի
կանգուն կատարեսցես զնա ի վերուստ,
եւ զդուրս տապանին ի կողմանէ ա-
րասցես. ներքնատունս եւ միջնատունս
17 եւ վերնատունս գործեսցես ի նմա։ Եւ
ահա ես ածից ջրհեղեղ ջրոյ ի վերայ
երկրի, ապականել զամենայն մարմին
յորում է շունչ կենդանի ի ներքոյ երկ-
նից. եւ ինչ որ իցէ ի վերայ երկրի՝
18 սատակեսցի։ Եւ եդից զուխտ իմ ընդ
քեզ. եւ մտցես ի տապանն դու եւ որ-
դիք քո եւ կին քո եւ կանայք որդւոց
19 քոց ընդ քեզ։ Եւ յամենայն անասնոց եւ
յամենայն գազանաց եւ յամենայն մարմ-
նոյ՝ երկու երկու յամենայնէ մուծցես ի
տապանն բուծանել ընդ քեզ. արու եւ
20 էգ լինիցին։ Յամենայն հաւուց թռչնոց
ըստ ազգի, եւ յամենայն անասնոց ըստ
ազգի, եւ յամենայն սողնոց երկրի ըստ
ազգի իւրեանց. երկու երկու յամենայ-
նէ մտանիցեն առ քեզ [7]կերակրել ընդ
21 քեզ՝ արու եւ էգ"։ Եւ դու առցես
քեզ յամենայն կերակրոց [8]զոր ուտիցէք",
եւ ժողովեսցես զառ քեզ. եւ եղիցի
22 քեզ եւ նոցա կերակուր։ Եւ արար Նոյ
զամենայն զոր միանգամ պատուիրեաց
նմա [2]Տէր Աստուած, նոյնպէս եւ արար։

## ԳԼ. Է

1 Եւ ասէ Տէր [2]Աստուած ցՆոյ, Մուտ
դու եւ ամենայն տուն քո ի տապանդ.
զի զքեզ տեսի արդար առաջի իմ յազ-
2 գիդ յայդմիկ։ Եւ յամենայն անասնոց
սրբոց մուծ ընդ քեզ եւթն եւթն արու
եւ էգ, եւ յամենայն անասնոց որ ոչ են
3 սուրբ՝ երկուս երկուս արու եւ էգ. Եւ
ի թռչնոց երկնից [2]սրբոց՝ եւթն եւթն
արու եւ էգ, [2]եւ ի թռչնոց որ ոչ սուրբ
են՝ երկու երկու արու եւ էգ," բուծա-
նել զաւակ ի վերայ ամենայն երկրի։
4 Եւ այլ եւս եւթն օր, եւ ածից ես անձ-
րեւ ի վերայ երկրի զքառասուն տիւ եւ
զքառասուն գիշեր, եւ ջնջեցից զամե-
նայն հասակ զոր արարի յերեսաց երկ-
5 րէ։ Եւ արար Նոյ զամենայն զոր մի-
անգամ պատուիրեաց նմա Տէր [2]Աս-
6 տուած։ Նոյ էր ամաց վեց հարիւրոց,
եւ ջրհեղեղ ջուրցն եղեւ ի վերայ երկրի։
7 Եւ եմուտ Նոյ եւ որդիք իւր եւ կին
նորա եւ կանայք որդւոց նորա ընդ նմա
8 ի տապանն վասն ջուրցն հեղեղի։ [2]Եւ
ի թռչնոց սրբոց, եւ ի թռչնոց որ ոչ
սուրբ էին, եւ" յանասնոց սրբոց, եւ
յանասնոց որ ոչ սուրբ են, [9]եւ յամե-
նայն սողնոց որ սողին ի վերայ երկրի,
9 Երկու երկու մտին առ Նոյ ի տապան
անդր՝ արու եւ էգ, որպէս պատուի-
10 րեաց [10]նմա Տէր" Աստուած։ Եւ եղեւ
յետ եւթն աւուր, եւ ջուր ջրհեղեղին
11 եղեւ ի վերայ երկրի, Յամին վեցհա-
րիւրորդի կենացն Նոյի, յերկրորդում
ամսեանն [11]ի քսան եւ յեւթն" ամսոյն.
[12]եւ պատառեցան ամենայն աղբերք
անդնդոց բազմաց, եւ սահանք երկնից
12 բացան. Եւ եղեւ անձրեւ ի վերայ երկ-
րի զքառասուն տիւ եւ զքառասուն գի-
13 շեր։ Յաւուր յայնմիկ եմուտ Նոյ, Սէմ,
Քամ, Յաբեթ, որդիք Նոյի, եւ կին Նո-
յի, եւ երեք կանայք որդւոց նորա ընդ
14 նմա ի տապան անդր. Նոքա եւ ամե-
նայն գազանք ըստ ազգի, եւ ամենայն
անասուն ըստ ազգի իւրեանց, եւ ամե-

---

[1] Եբր. զղջացայ [2] Եբր. Եհովա [3] Եբր. գնաց Նոյ ընդ [4] Եբր. Վախճան ամենայն մարմնոյ [5] Եբր. գոփեր, որ է ինչ մայրի [6] Եբր. Լուսամուտս գործեսցես տապանին [7] Եբր. զի կեցցեն

[8] Եբր. որ ուտին [9] Եբր. և ի թռչնոց և [10] Եբր. Նոյի [11] Եբր. յեւթն և տասն [12] Եբր. յաւուր յայնմիկ

նայն սողուն շարժուն ի վերայ երկրի
ըստ ազգի իւրեանց, եւ ամենայն հաւ
15 թռչուն ըստ ազգի իւրում, Մտին առ
Նոյ ի տապան անդր երկու երկու յամե-
նայն մարմնոյ յորում է շունչ կենդանի։
16 Եւ որ մտանէինն՝ արու եւ էգ յամե-
նայն մարմնոյ մտանէին, որպէս պա-
տուիրեաց Աստուած Նոյի. եւ փակեաց
Տէր [1]Աստուած արտաքոյ նորա զտա-
17 պանն։ Եւ եղեւ ջրհեղեղ զքառասուն
տիւ [1]եւ զքառասուն գիշեր" ի վերայ երկ-
րի. եւ բազմացաւ ջուրն եւ վերացոյց
18 զտապանն եւ բարձրացաւ յերկրէ։ Եւ
զօրանայր ջուրն եւ բազմանայր յոյժ ի
վերայ երկրի, եւ շրջէր տապանն ի վե-
19 րայ ջրոց։ Եւ սաստկանայր ջուրն յոյժ
յոյժ ի վերայ երկրի, եւ ծածկէր զամե-
նայն լերինս բարձունս որ էին ի ներ-
20 քոյ երկնից։ Հնգետասան կանգուն բարձ-
րացաւ ջուրն ի վեր, եւ ծածկեաց զամե-
21 նայն լերինս։ Եւ մեռաւ ամենայն մար-
մին շարժուն ի վերայ երկրի, թռչնոց
եւ անասնոց եւ գազանաց. եւ ամենայն
սողուն զեռուն ի վերայ երկրի, եւ ա-
22 մենայն մարդ։ Ամենայն որ ունէր շունչ
կենդանի յանդունս իւր, եւ ամենայն
որ ինչ էր ի վերայ ցամաքի՝ մեռաւ։
23 Եւ ջնջեաց զամենայն հաստատ որ էր ի
վերայ երեսաց երկրի, ի մարդոյ մինչեւ
յանասուն եւ ի սողնոց մինչեւ ի թռչունս
երկնից, եւ ջնջեցան յերկրէ. եւ մնաց
միայն Նոյ եւ որ ընդ նմա էին ի տապանի
24 անդ։ Եւ բարձրացաւ ջուրն ի վերայ երկրի
աւուրս հարեւր եւ յիսուն։

Գլ. Ը

1 Եւ յիշեաց Աստուած զՆոյ եւ զամե-
նայն գազանս եւ զամենայն անասունս
[1]եւ զամենայն թռչունս" որ էին ընդ
նմա ի տապանի անդ. եւ ած Աստուած
հողմ ի վերայ երկրի, եւ դադարեաց
2 ջուրն։ Եւ խցան աղբերք անդնդոց
եւ սահանք երկնից, եւ արգելաւ անձ-
3 րեւ յերկնից։ Եւ դիջանէր տակաւ, եր-
թայր ջուրն եւ թուլանայր յերկրէ եւ
նուազէր ջուրն յետ հարեւր եւ յիսուն
4 աւուր։ Եւ նստաւ տապանն յեւթնե-
րորդում ամսեանն [2]ի քսան եւ յեւթն"
5 ամսոյն ի լերինս Արարատայ։ Եւ ջուրն
երթայր եւ նուազէր մինչեւ ի տասնե-
րորդ ամիսն. իսկ յամսեանն [3]մետա-
սաներորդի, որ օր առաջին էր ամսոյն՝
երեւեցան գլուխք լերանց։
6 Եւ եղեւ յետ քառասուն աւուր ե-
բաց Նոյ զպատուհան տապանին զոր ա-
7 րար. Եւ արձակեաց զագռաւն, եւ ել
եւ անդրէն ոչ դարձաւ մինչեւ ցցամա-
8 քել ջրոյն յերկրէ։ Եւ արձակեաց զա-
ղաւնին [4]զհետ նորա" տեսանել թէ ցա-
9 ծուցեա՞լ իցէ ջուրն յերեսաց երկրէ. Եւ
չգտեալ աղաւնւոյն հանգիստ ոտից իւ-
րոց՝ դարձաւ անդրէն առ նա ի տապան
անդր. զի ջուր գեռ ունէր զամենայն
երեսս երկրի. եւ ձգեաց զձեռն եւ ըն-
կալաւ զնա, եւ ած զնա անդրէն առ իւր
10 ի տապան անդր։ Եւ դադարեաց եւս ա-
ւուրս եւթն, եւ դարձաւ արձակեաց
11 զաղաւնին ի տապանէ անտի. Եւ դարձաւ
առ նա աղաւնին ընդ երեկս, եւ ունէր
տերեւ ձիթենւոյ շիղ ի բերան իւրում.
եւ գիտաց Նոյ, թէ ցածուցեալ են ջուրքն
12 յերկրէ։ Եւ դադարեաց աւուրս եւթն
եւս, եւ դարձեալ արձակեաց զաղաւնին,
եւ ոչ եւս յաւել դառնալ առ նա։
13 Եւ եղեւ ի վեց հարիւրորդի եւ ի մի-
ում ամի [1]կենաց Նոյի", յամսեանն ա-
ռաջնում որ օր մի էր ամսոյն, նուա-
զեաց ջուրն յերեսաց երկրէ. եւ եբաց Նոյ
զձեղուն տապանին զոր արար, եւ ետես
զի նուազեալ էր ջուրն յերեսաց երկրէ։
14 Իսկ յամսեանն երկրորդի, որ օր քսան
եւ եւթն էր ամսոյն՝ ցամաքեցաւ երկիր։
15 Եւ խօսեցաւ [1]Տէր Աստուած ընդ Նո-
16 յի եւ ասէ, Ել ի տապանէ այտի դու
եւ կին քո եւ որդիք քո եւ կանայք
17 որդւոց քոց ընդ քեզ, Եւ ամենայն գա-
զանք որ են ընդ քեզ, եւ ամենայն մար-
մին ի թռչնոց մինչեւ ցանասունս. եւ
զամենայն սողուն զեռուն երկրի հան
ընդ քեզ, եւ զեռասցեն ի վերայ երկ-
րի. եւ [5]աճեցէք եւ բազմացարուք" ի
18 վերայ երկրի։ Եւ ել Նոյ եւ կին նորա
եւ որդիք նորա եւ կանայք որդւոց նո-
19 րա ընդ նմա. Եւ ամենայն գազանք եւ
ամենայն սողուն շարժուն եւ ամենայն
թռչուն յերկրէ ըստ ազգի իւրեանց ե-
լին ի տապանէ անտի։
20 Եւ շինեաց Նոյ [6]սեղան [7]Աստուծոյ,
եւ առ յամենայն անասնոց սրբոց եւ յա-

[1] 3Ոմնք. [illegible]   [2] Ոմնք. յեւթն և տասն

[3] Ոմնք. տասներորդի   [4] Ոմնք. յիւրմէ   [5] Ոմնք. աճեցէն և բազմացին   [6] Ոմնք զոհանոց, այս- [illegible]   [7] Ոմնք. Տեառն

մենայն թռչնոց սրբոց, եւ եհան ողջա-
21 կէզ ի վերայ սեղանոյն. Եւ հոտոտե-
ցաւ Տէր [1]Աստուած ի հոտ անուշից։
Եւ ասէ Տէր [1]Աստուած՝ ածեալ զմտաւ,
Ոչ եւս յաւելից անիծանել զերկիր վասն
գործոց մարդկան, զի միտք մարդոյ
հաստատեալ են ի խնամս չարի ի ման-
կութենէ իւրմէ. արդ ոչ եւս յաւելից
հարկանել զամենայն մարմին կենդանի
22 որպէս արարի. Այսուհետեւ զամենայն
աւուրս երկրի՝ սերմն եւ հունձք, ցուրտ
եւ տօթ, ամառն եւ [2]գարուն, [3]զտիւ
եւ զգիշեր՝՝ մի՛ դադարեսցեն։

## ԳԼ. Թ

1 Եւ օրհնեաց Աստուած զՆոյ եւ զոր-
դիս նորա, եւ ասէ ցնոսա, Աճեցէք եւ
բազմացարուք եւ լցէք զերկիր [1]եւ տի-
2 րեցէք զմա՝՝. Եւ ահ եւ երկեւղ ձեր ե-
ղիցի ի վերայ ամենայն գազանաց երկ-
րի, եւ ի վերայ ամենայն թռչնոց երկ-
նից, եւ ի վերայ ամենայն զեռնոց երկ-
րի, եւ ի վերայ ամենայն ձկանց ծո-
վու, զորս ընդ ձեռամբ ձերով ետու։
3 Եւ ամենայն զեռուն որ է կենդանի՝ ձեզ
լիցի ի կերակուր. իբրեւ զբանջար խոտոյ
4 ետու ձեզ զամենայն։ Բայց զմիս ա-
5 րեամբ շնչոյ մի՛ ուտիցէք. Քանզի եւ
զձեր արիւն շնչոյ խնդրեցից. ի ձեռաց
ամենայն գազանաց խնդրեցից զնա եւ
ի ձեռաց մարդոյ. ի ձեռաց առն զշունչ
6 եղբօր իւրոյ խնդրեցից։ Որ հեղու զա-
րիւն մարդոյ, փոխանակ արեան նորա
հեղցի արիւն նորա. զի ի պատկեր Ա-
7 ստուծոյ [4]արարի ես՝՝ զմարդն. Այլ դուք
աճեցէք եւ բազմացարուք եւ լցէք զեր-
կիր, եւ բազմացարուք ի վերայ դորա։
8 Եւ խօսեցաւ [1]Տէր Աստուած ընդ Նո-
յի եւ ընդ որդիս նորա որ ընդ նմա էին
9 եւ ասէ, Եւ ահաւասիկ ես հաստատեմ
զուխտ իմ ընդ ձեզ, եւ ընդ զաւակի
10 ձերում յետ ձեր. Եւ ընդ ամենայն շնչոյ
կենդանւոյ որ ընդ ձեզ են, ի թռչնոց
եւ յանասնոց եւ յամենայն գազանաց
երկրի որ ընդ ձեզ, եւ յամենեցունց որ
ելին ի տապանէ անտի, եւ յամենայն
11 անասնոց երկրի։ Եւ հաստատեցից զուխտ
իմ ընդ ձեզ. եւ ոչ եւս մեռանիցի ա-
մենայն մարմին ի ջրհեղեղէ, եւ ոչ եւս

[1]Եբր. դ-յ-ւ-ե [2]Եբր. ձմեռն [3]Եբր. տիւ և գիշեր [4]Եբր. արար

եղիցի ջրհեղեղ ջուրց ապականել զա-
12 մենայն երկիր։ Եւ ասէ [1]Տէր Աստուած
[1]ցՆոյ, Այս է նշան ուխտին զոր ես տամ
ընդ իս եւ ընդ ձեզ, եւ ի մէջ ամենայն
շնչոյ կենդանւոյ որ է ընդ ձեզ, յազգս
13 յաւիտենից. Զաղեղն իմ եդից յամպս,
եւ եղիցի ի նշանակ յաւիտենական ուխ-
տին ընդ իս եւ ընդ ամենայն երկիր։
14 Եւ եղիցի ի գումարել իմձ զամպս ի վե-
րայ երկրի, երեւեսցի աղեղն իմ յամպս.
15 Եւ յիշեցից զուխտ իմ որ ընդ իս եւ ընդ
ձեզ, եւ ի մէջ ամենայն շնչոյ կենդան-
ւոյ յամենայն մարմին. եւ ոչ եւս ե-
ղիցի ջրհեղեղ ի սատակել զամենայն
16 մարմին։ Եւ եղիցի աղեղն իմ յամպս,
եւ տեսից՝ յիշել զուխտն յաւիտենական
ի մէջ իմ եւ ի մէջ ամենայն շնչոյ կեն-
դանւոյ յամենայն մարմնի որ է ի վերայ
17 երկրի։ Եւ ասէ Աստուած ցՆոյ, Այս է
նշան ուխտին զոր [5]ուխտեցի ես ընդ իս
եւ [1]ընդ ձեզ, եւ՝՝ ի մէջ ամենայն մարմ-
նոյ որ է ի վերայ երկրի։
18 Եւ էին որդիքն Նոյի որ ելին ի տա-
պանէ անտի, Սէմ, Քամ, Յաբեթ. Քամ
19 էր հայր Քանանու։ Երեք սոքա էին որ-
դիքն Նոյի, եւ ի սոցանէ սփռեցան ընդ
ամենայն երկիր։
20 Եւ սկսաւ Նոյ, այր հողագործ, [1]զեր-
21 կիր գործել՝՝ եւ անկեաց այգի, Եւ արբ
ի գինւոյն եւ արբեցաւ, եւ մերկացաւ
22 [6]ի տան իւրում։ Եւ ետես Քամ, հայր
Քանանու, զմերկութիւն հօր իւրոյ եւ
ել պատմեաց երկուց եղբարց իւրոց ար-
23 տաքոյ։ Եւ առեալ Սեմայ եւ Յաբեթի
հանդերձ, եդին ի վերայ թիկանց երկո-
ցուն, եւ գնացին յետս յետս եւ ծած-
կեցին զմերկութիւն հօրն իւրեանց. եւ
զերեսս իւրեանց յետս ընդդէմ ունէին,
եւ զմերկութիւն հօրն իւրեանց ոչ տե-
24 սին։ Եւ սթափեցաւ Նոյ ի գինւոյ ան-
տի իւրմէ, եւ գիտաց զինչ արար ընդ
25 նա որդին իւր կրտսեր, եւ ասէ, Անի-
ծեալ Քանան, [7]մանուկ, եւ եղիցի ծա-
26 ռայ՝՝ եղբարց իւրոց։ Եւ ասէ, Օրհնեալ
Տէր [1]Աստուած, Աստուած Սեմայ, եւ
27 եղիցի Քանան ծառայ [8]նորա. Ընդար-
ձակեսցէ Աստուած Յաբեթի, եւ բնա-
կեսցէ [9]ի տան Սեմայ, եւ եղիցի Քա-
նան ծառայ [10]նոցա։

[5]Եբր. հաստատեցի [6]Եբր. ի խորանի [7]Եբր. եղիցի ծառայ ծառայից [8]Կամ, նոցա [9]Եբր. ի խորանս [10]Կամ, նորա

28 Եւ եկեաց Նոյ յետ ջրհեղեղին ամս
29 երեք հարեւր եւ յիսուն ։ Եւ եղեն ա-
մենայն աւուրք Նոյի ամք ինն հարեւր
եւ յիսուն , եւ մեռաւ ։

Գլ. Ժ

1 Եւ այս են ծնունդք որդւոցն Նոյի .
Սէմ, Քամ, Յաբեթ . եւ ծնան նոցա
որդիք յետ ջրհեղեղին ։
2 Որդիք Յաբեթի՝ Գամեր եւ Մագովգ
եւ Մադա եւ Յաւան եւ [1]Եղիսա եւ" Թո-
3 բէլ եւ Մոսոք եւ Թիրաս ։ Եւ որդիք
Գամերայ՝ Ասքանազ եւ Րիփաթ եւ Թոր-
4 գոմա ։ Եւ որդիք Յաւանայ՝ Եղիսա եւ
5 Թարսիս , Կիտացիք եւ [2]Ռոդացիք ։ Եւ
ի սոցանէ մեկնեցան կղզիք ազգաց յերկ-
րի իւրեանց , իւրաքանչիւր՝ ըստ լեզուս
յազգս իւրեանց եւ ի սահմանս իւրեանց ։
6 Եւ որդիք Քամայ՝ Քուշ եւ Մեսրայիմ,
7 Փուդ եւ Քանան ։ Եւ որդիք Քուշայ՝
Սաբա եւ Եւիլա եւ Սաբաթա եւ Ռեգ-
մա եւ Սաբակաթա . եւ որդիք Ռեգմայ՝
8 Սաբա եւ Յուդադան ։ Եւ Քուշ ծնաւ
զՆեբրովթ . նա սկսաւ լինել սկայ ի վե-
9 րայ երկրի ։ Եւ նա էր սկայ որսորդ ա-
ռաջի Տեառն [1]Աստուծոյ . վասն այնորիկ
ասեն , Իբրեւ զՆեբրովթ սկայ առաջի
10 Տեառն [1]Աստուծոյ ։ Եւ եղեւ սկիզբն
թագաւորութեան նորա Բաբելոնն եւ
Որէք եւ Աքադ եւ Քաղանէ յերկրին Սե-
11 նաար ։ Յերկրէն յայնմանէ ել Ասուր եւ
շինեաց զՆինուէ եւ զՌոբովթ քաղաք
12 եւ զՔաղաղ, Եւ [3]զԴասեմ ի մէջ Նի-
նուէի եւ ի մէջ Քաղաղայ , այն է քա-
13 ղաք մեծ ։ Եւ Մեսրայիմ ծնաւ զԼուդիի-
մացիս եւ զԵնեմիիմացիս եւ զԼաբիի-
14 մացիս եւ զՆեփթաղիմացիս Եւ զՊատ-
րոսոնիիմացիս , եւ զՔասղոնիիմացիս
( ուստի ելին Փղշտացիք ) , եւ զԿափ-
15 թորիմացիս ։ Եւ Քանան ծնաւ զՍիդոն
16 զանդրանիկ իւր , եւ զՔետացին Եւ զՅե-
բուսացին եւ զԱմորհացին եւ զԳեր-
17 գեսացին Եւ զԽեւացին եւ զԱրուկա-
18 ցին եւ զԱսենացին Եւ զԱրադիացին եւ
զՍամարացին եւ զԱմաթացին . եւ յետ
այնորիկ սփռեցան ազգք Քանանացւոց ։
19 Եւ եղեն սահմանք Քանանացւոց՝ ի Սի-
դոնէ մինչեւ ի գալ ի Գերարա եւ ի Գա-
զա , մինչեւ ի գալ ի Սոդոմ եւ ի Գո-
մոր , եւ յԱդամա եւ ի Սեբոյիմ մինչեւ
20 ի Լասա ։ Սոքա են որդիք Քամայ յազգս
իւրեանց , ըստ լեզուս իւրեանց , յաշ-
խարհս իւրեանց եւ ի սահմանս իւրեանց ։
21 Եւ Սեմայ ծնան որդիք եւ նորա, հօրն
ամենայն որդւոցն Եբերայ , եղբօրն Յա-
22 բեթի երիցու ։ Որդիք Սեմայ՝ Ելամ եւ
Ասուր , Արփաքսադ եւ Լուդ եւ Արամ.
23 Եւ որդիք Արամայ՝ Հուս եւ Եմուղ եւ
24 Գաթեր եւ Մասղ . Եւ Արփաքսադ ծնաւ
25 զՍաղա , եւ Սաղա ծնաւ զԵբեր ։ Եւ Ե-
բերայ ծնան երկու որդիք . անուն միոյն
[4]Փաղէկ , զի յաւուրս նորա բաժանե-
ցաւ երկիր . եւ անուն եղբօր նորա Յեկ-
26 տան ։ Եւ Յեկտան ծնաւ զԷլմովդադ եւ
27 զՍաղէք եւ զԱսարմովթ եւ զՅարադ Եւ
28 զՅոդորամ եւ զԵզէլ եւ զԴեկլա Եւ
29 զԳեբաղ եւ զԱբիմէէլ եւ զՍաբէի Եւ
զՈւփիր եւ զԵւիլա եւ զՅոբաբ. ամե-
30 նեքեան սոքա որդիք Յեկտանայ ։ Եւ
եղեւ բնակութիւն նոցա ի Մասեայ
մինչեւ գալ ի Սովփերա լեառնն արեւե-
31 լից ։ Սոքա են որդիք Սեմայ յազգս
իւրեանց , ըստ լեզուս իւրեանց , յաշ-
խարհս իւրեանց եւ ի սահմանս իւրեանց ։
32 Այս են ազգք որդւոց Նոյի ըստ ծնունդս
իւրեանց , ըստ սահմանս իւրեանց . եւ
ի սոցանէ սփռեցան [5]կղզիք ազգաց"
ի վերայ երկրի յետ ջրհեղեղին ։

Գլ. ԺԱ

1 Եւ էր ամենայն երկիր լեզու մի , եւ
2 բարբառ մի ամենեցուն ։ Եւ եղեւ ի խա-
ղալն նոցա յարեւելից՝ գտին դաշտ մի
յերկրին Սենաար , եւ բնակեցան անդ ։
3 Եւ ասեն այր ցընկեր իւր , Եկայք արկ-
ցուք աղիւս , եւ թրծեսցուք զայն
հրով ։ Եւ եղեւ նոցա աղիւսն ի տեղի
4 քարի , եւ կուպր ի տեղի շաղախոյ ։ Եւ
ասեն , Եկայք շինեսցուք մեզ քաղաք
եւ աշտարակ , որոյ գլուխն մին-
չեւ յերկինս . եւ արասցուք մեզ անուն
[6]յառաջ քան զսփռել" ի վերայ երեսաց
5 ամենայն երկրի ։ Եւ էջ Տէր տեսանել
զքաղաքն եւ զաշտարակն զոր շինէին
6 որդիք մարդկան . Եւ ասէ Տէր , Ահա
ազգ մի եւ լեզու մի ամենեցուն , եւ
զայդ սկսան գործել . եւ արդ ոչինչ պա-
կասէ ի նոցանէ , զամենայն զոր խնդ յօ-

[1]Եբր. Եհովայէ [2]Կամ, Դոդացիք [3]Եբր զՌեսէն

[4]Այսինքն, բաժանումն [5]Եբր. ազգք [6]Եբր. գուցէ սփռեսցուք

7 ժարեսցին գործել. Եկայք իջցուք և
խառնակեսցուք անդ զլեզուս նոցա, զի
մի լուիցեն իւրաքանչիւր բարբառոյ ըն-
8 կերի իւրոյ։ Եւ ցրուեաց զնոսա Տէր
[1]Աստուած անտի ընդ երեսս ամենայն
երկրի, և դադարեցին ի շինելոյ զքա-
9 ղաքն [1]և զաշտարակն"։ Վասն այնո-
րիկ կոչեցաւ անուն նորա [2]Խառնակու-
թիւն. զի անդ խառնակեաց Տէր [1]Ա-
ստուած զլեզուս ամենայն երկրի, և ան-
տի ցրուեաց զնոսա Տէր [1]Աստուած ընդ
երեսս ամենայն երկրի։
10 Եւ այս են ծնունդք Սեմայ. Սէմ որդի
հարիւրամեան էր յորժամ ծնաւ զԱր-
փաքսադ յերկրորդում ամի յետ ջրհեղե-
11 ղին։ Եւ եկեաց Սեմ յետ ծնանելոյ նորա
զԱրփաքսադ՝ ամս հինգ հարիւր, և ծնաւ
12 ուստերս և դստերս, [1]և մեռաւ։" Եւ
Արփաքսադ եկեաց ամս [1]հարիւր երեսուն
13 և հինգ, և ծնաւ զՍաղա։ Եւ եկեաց
Արփաքսադ յետ ծնանելոյ նորա զՍա-
ղա՝ ամս [3]երեք հարիւր և երեսուն", և
ծնաւ ուստերս և դստերս, [1]և մեռաւ"։[4]
14 Եւ եկեաց Սաղա ամս [1]հարիւր և" երե-
15 սուն, և ծնաւ զԵբեր։ Եւ եկեաց Սաղա
յետ ծնանելոյ նորա զԵբեր՝ ամս [3]երեք
հարիւր և երեսուն", և ծնաւ ուստերս
16 և դստերս, [1]և մեռաւ։" Եւ եկեաց Ե-
բեր ամս [1]հարիւր երեսուն և չորս, և
17 ծնաւ զՓաղէկ։ Եւ եկեաց Եբեր յետ
ծնանելոյ նորա զՓաղէկ ամս [5]երկերիւր
և եւթանասուն", և ծնաւ ուստերս և
18 դստերս, [1]և մեռաւ։" Եւ եկեաց Փա-
ղէկ ամս [6]հարիւր և երեսուն և չորս",
19 և ծնաւ զՌագաու։ Եւ եկեաց Փաղէկ
յետ ծնանելոյ նորա զՌագաու՝ ամս եր-
կերիւր և ինն, և ծնաւ ուստերս և
20 դստերս, [1]և մեռաւ։" Եւ եկեաց Ռա-
գաւ ամս [1]հարիւր երեսուն և երկու,
21 և ծնաւ զՍերուգ։ Եւ եկեաց Ռագաւ
յետ ծնանելոյ նորա զՍերուգ՝ ամս եր-
կերիւր և եւթն, և ծնաւ ուստերս և
22 դստերս, [1]և մեռաւ։" Եւ եկեաց Սե-
րուգ ամս [1]հարիւր և" երեսուն, և
23 ծնաւ զՆաքովր։ Եւ եկեաց Սերուգ յետ
ծնանելոյ նորա զՆաքովր՝ ամս երկերիւր,
և ծնաւ ուստերս և դստերս, [1]և մե-
24 ռաւ։" Եւ եկեաց Նաքովր ամս [7]եւթա-
25 նասուն և ինն, և ծնաւ զԹարա։ Եւ
եկեաց Նաքովր յետ ծնանելոյ նորա
զԹարա՝ ամս հարիւր [8]քսան և երկու", և
26 ծնաւ ուստերս և դստերս, [1]և մեռաւ։" Եւ
եկեաց Թարա ամս եւթանասուն, և
ծնաւ զԱբրամ և զՆաքովր և զԱռան։
27 Այս են ծնունդք Թարայի. Թարա
ծնաւ զԱբրամ և զՆաքովր և զԱռան.
28 և Առան ծնաւ զՂովտ։ Եւ մեռաւ Ա-
ռան առաջի Թարայի հօր իւրոյ, յերկ-
րին յորում ծնաւ, [9]յաշխարհին Քաղ-
29 դեացւոց։ Եւ առին Աբրամ և Նաքովր
իւրեանց կանայս. անուն կնոջն Աբրա-
մու՝ Սարա, և անուն կնոջն Նաքովրայ՝
Մեղքայ, դուստր Առանայ, հօր Մեղքայ,
30 և հօր Յեսքայ։ Եւ էր Սարա ամուլ և
31 ոչ ծնանէր։ Եւ առ Թարա զԱբրամ զոր-
դի իւր, [1]և զՆաքովր զորդի իւր," և
զՂովտ՝ զորդի Առանայ որդւոյ իւրոյ, և
զՍարա զնու իւր, զկին Աբրամու որդ-
ւոյ իւրոյ, և եհան զնոսա [10]յաշխարհէն
Քաղդեացւոց՝ երթալ յերկիրն Քանա-
նացւոց. և եկին մինչև ցԽառան, և
32 բնակեցին անդ։ Եւ եղեն ամենայն ա-
ւուրք Թարայի ի Խառան՝ ամք երկերիւր
և հինգ, և մեռաւ Թարա ի Խառան։

ԳԼ. ԺԲ

1 Եւ ասէ [11]Աստուած ցԱբրամ, Ել դու
յերկրէ քումմէ և յազգէ քումմէ և
ի տանէ հօր քո՝ յերկիր զոր ցուցից քեզ.
2 Եւ արարից զքեզ յազգ մեծ, և օրհնե-
ցից զքեզ, և մեծացուցից զանուն քո.
3 և եղիցես օրհնեալ։ Եւ օրհնեցից զօրհ-
նիչս քո, և զանիծիչս քո անիծից.
և օրհնեսցին ի քեզ ամենայն ազգք
4 երկրի։ Եւ գնաց Աբրամ որպէս խօսե-
ցաւ ընդ նմա [11]Աստուած. երթայր ընդ
նմա և Ղովտ. և Աբրամ էր ամաց եւ-
թանասուն և հնգից յորժամ ել ի Խա-
5 ռանէ։ Եւ առ Աբրամ զՍարա զկին իւր,
և զՂովտ զեղբօրորդի իւր, և զամե-
նայն զինչս իւրեանց զոր ստացան, և
զամենայն անձն զոր ստացան ի Խառան,
և ելին գնալ յերկիրն Քանանացւոց. և

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. Բաբել [3] Եբր. չորեքհարիւր և երիս [4] Յոյնն յաւելու. Եւ եկեաց Կայնան ամս հարիւր և երեսուն, և ծնաւ զՍաղա. և եկեաց Կայնան յետ ծնանելոյ նորա զՍաղա՝ ամս երեք հարիւր և երեսուն, և ծնաւ ուստերս և դստերս, և մեռաւ։ [5] Եբր. չորեքհարիւր և երեսուն [6] Եբր. երեսուն

[7] Եբր. քսան [8] Եբր. ինն և տասն [9] Եբր. յՈւր [10] Եբր. յՈւրէ [11] Եբր. Տէր

6 եկին յերկիրն Քանանու։ Եւ շրջեցաւ
Աբրամ յերկրին՝ ընդ երկայնութիւն նո-
րա մինչև ի տեղին ի Սիւքեմ, ի կաղ-
նին [1]բարձր․ բայց Քանանացիք բնա-
7 կեալ էին յայնժամ յերկրին։ Եւ երևե-
ցաւ Տէր Աբրամու, և ասէ ցնա, Զա-
ւակի քում տաց զերկիրս զայս։ Եւ շի-
նեաց անդ Աբրամ սեղան Տեառն որ ե-
8 րևեցաւ նմա։ Եւ մեկնեցաւ անտի
ի լեառնն ընդ արևելս [2]ի Բեթէլ․ և ե-
հար անդ զխորան [3]իւր ի Բեթէլ, յան-
դիման ծովուն և Անգէի ընդ արևելս"․
և շինեաց անդ սեղան Տեառն, և կո-
9 չեաց յանուն Տեառն։ Եւ չուեաց Աբ-
րամ, [4]գնաց բնակեցաւ յանապատի"։
10 Եւ եղև սով յերկրին, և էջ Աբ-
րամ յԵգիպտոս բնակել անդ պանդխ-
տութեամբ, զի զօրացաւ սով յերկրին։
11 Եւ եղև իբրև մերձեցաւ Աբրամ մտա-
նել յԵգիպտոս, և ասէ ցՍարա ցկին
իւր, Գիտեմ զի կին գեղեցիկ ես դու․
12 Արդ եղիցի եթէ տեսանիցեն Եգիպտա-
ցիքն, և ասիցեն թէ կին նորա է սա․
և սպանանիցեն զիս, և զքեզ ապրե-
13 ցուցանիցեն․ Ասասցես թէ Քոյր նորա
եմ․ զի բարի լիցի ինձ վասն քո, և
14 կեցցէ անձն իմ յաղագս քո։ Եւ եղև
իբրև եմուտ Աբրամ յԵգիպտոս, և
տեսեալ Եգիպտացւոցն զկինն զի գեղե-
15 ցիկ էր յոյժ․ Տեսին զնա և իշխանքն
Փարաւոնի, և գովեցին զնա առաջի
Փարաւոնի, և տարան զնա ի տուն Փա-
16 րաւոնի։ Եւ Աբրամու բարիս առնէին
վասն նորա․ և եղեն նորա խաշինք,
անդեայք և էշք, ծառայք և աղախ-
17 նայք, ջորիք և ուղտք։ Եւ պատժեաց
Աստուած զՓարաւոն պատժօք մեծա-
մեծօք [5]և չարօք" և զտուն նորա վասն
18 Սարայի կնոջն Աբրամու։ Կոչեաց Փա-
րաւոն զԱբրամ, և ասէ ցնա, Զի՞նչ
գործեցեր զայդ ընդ իս, զի ոչ պատ-
19 մեցեր եթէ կին քո է․ Ընդէ՞ր ասա-
ցեր թէ Քոյր իմ է, և [6]առի զդա ինձ
կնութեան․ և արդ ահաւասիկ կին քո
20 առաջի քո, առ և գնա ի բաց։ Եւ
պատուէր ետ արանց վասն Աբրամու յու-
ղարկել զնա և զկին նորա և զամենայն
որ ինչ էր նորա, [5]և զՂովտ ընդ նմա։"

ԳԼ. ԺԳ

1 Եւ ել Աբրամ յԵգիպտոսէ՝ ինքն և
կին իւր և ամենայն որ ինչ էր նորա,
2 և Ղովտ ընդ նմա [7]յանապատն։ Եւ Աբ-
րամ էր մեծատուն յոյժ անասնովք և ար-
3 ծաթով և ոսկւով․ Եւ գնաց անդրէն
[8]ուստի եկն յանապատն" մինչև ցԲեթէլ,
մինչև ցտեղին ուր էր խորան նորա
4 զառաջինն, Ընդ Բեթէլ և ընդ [9]Անգէէ
ի տեղի սեղանոյն, զոր արար անդ զա-
ռաջինն․ և կարդաց անդ Աբրամ զա-
նուն Տեառն [5]Աստուծոյ։
5 Եւ Ղովտայ որ երթեալն էր ընդ Աբ-
րամու՝ էր արջառ և ոչխար և անա-
6 սուն․ Եւ ոչ բաւէր նոցա երկիրն բնա-
կելոյ ի միասին․ զի էին նոցա ստա-
ցուածք բազումք, և ոչ կարէին բնա-
7 կել ի միասին։ Եւ եղև մարտ ի մէջ
հովուաց խաշանցն Աբրամու, և ի մէջ
հովուաց խաշանցն Ղովտայ․ և Քանա-
նացիքն և Փերեզացիքն յայնժամ բնա-
8 կեալ էին յերկրին։ Ասէ Աբրամ ցՂովտ,
Մի՛ լիցի կռիւ ընդ իս և ընդ քեզ, և
ընդ հովիւս իմ և ընդ հովիւս քո․ զի
9 արք եղբարք եմք մեք։ Ո՞չ ահաւասիկ
երկիրդ ամենայն առաջի քո է, մեկնեաց
յինէն․ եթէ դու յահեակ՝ ես յաջ, եթէ
10 դու յաջ՝ ես յահեակ։ Ամբարձ Ղովտ
զաչս իւր և ետես զամենայն [10]կողմանս
Յորդանանու, զի ամենայն յուռթի էր,
մինչչև կործանեալ էր Աստուծոյ զՍոդոմ
և զԳոմոր, իբրև զդրախտն Աստու-
ծոյ էր և իբրև զերկիրն Եգիպտացւոց՝
11 մինչև ի գալ ի Սեգովր։ Եւ ընտրեաց
իւր Ղովտ զամենայն [10]կողմանսն Յորդա-
նանու․ և չուեաց Ղովտ յարևելից, և
մեկնեցան իւրաքանչիւր յեղբօրէ իւրմէ։
12 Եւ Աբրամ պանդխտեցաւ յերկրին Քա-
նանացւոց․ և Ղովտ նստաւ [11]ի քաղաքի
միում կողմանցն, և բնակեցաւ" ի Սո-
13 դոմ։ Եւ մարդիկն Սոդոմացւոց չարք և
մեղաւորք էին առաջի [12]Աստուծոյ յոյժ։
14 Եւ ասէ [13]Աստուած ցԱբրամ յետ մեկ-
նելոյն Ղովտայ ի նմանէ, Հայեաց աչօք
քովք և տես ի տեղւոջէ յայդմանէ յո-
րում դու ես, ի կողմանէ հիւսիսոյ և
15 հարաւոյ, յարևելից և ի ծովու․ Զի

[1] Այլս. Մամբրէի [2] Այլս. Բեթելայ [3] Այլս. իւր․ ունէր զԲեթէլ ընդ արեւմուտս, և զԳայի՝ ընդ արեւելս [4] Այլս. երթայր և չուէր ի Հարաւ կոյս [5] Յայլս. պակասէ [6] Այլս. առնուլ [7] Այլս. ի Հարաւակողմն Քանանու [8] Այլս. ըստ իջավանաց իւրոց ի Հարաւակողմն Քանանու [9] Այլս. Գայի [10] Այլս. դաշտն [11] Այլս. ի քաղաքս դաշտին, և հար զվրան իւր մինչև [12] Այլս. Տեառն [13] Այլս. Տէր

զամենայն երկիր զոր դու տեսանես՝
քեզ տաց զդա եւ զաւակի քում մինչեւ
16 յաւիտեան։ Եւ արարից զզաւակ քո իբ-
րեւ զաւազ երկրի. եթէ կարիցէ ոք
թուել զաւազ երկրի, ապա եւ քո զա-
17 ւակ ընդ թիւ մտցէ։ Եւ արդ արի
շրջեաց ընդ երկիրդ յերկայնութիւն դորա
եւ ի լայնութիւն դորա, զի քեզ տաց
18 զդա։ Եւ չու արարեալ Աբրամու՝ եկն
բնակեցաւ առ կաղնեաւն Մամբրէի, որ
է ի Քեբրոն. եւ շինեաց անդ սեղան
Տեառն [1]Աստուծոյ։

## ԳԼ. ԺԴ

1 Եւ եղեւ ի թագաւորութեանն Ամար-
փաղայ արքայի Սենաարայ, Արիովք ար-
քայ Ելլասարայ եւ Քոդողագոմոր ար-
քայ Եղամայ, եւ Թադգաղ արքայ ազ-
2 գաց, Եդուն պատերազմ ընդ Բալլայ
արքայի Սոդոմացւոց, եւ ընդ Բարսայ
արքայի Գոմորացւոց, եւ ընդ Սենայ
արքայի Ադամացւոց, եւ ընդ Սիմորո-
բայ արքայի Սեբոյիմացւոց, եւ ընդ թա-
գաւորին Բաղակայ, այն ինքն է Սե-
3 գովր։ Ամենեքեան սոքա գումարեցան
4 ի ձորն [2]աղի, որ է ծով աղտից՝։ Երկո-
տասան ամ ի ծառայութեան կացեալ
էին Քոդողագոմորայ, եւ յերեքտասա-
5 ներորդումն ամին ապստամբեցին։ Եւ յա-
մին չորեքտասաներորդի եկն Քոդողո-
գոմոր եւ թագաւորքն որ ընդ նմա, եւ
կոտորեցին զսկայսն որ յԱստարովթ Կառ-
նայիմ էին, եւ զազգս հզօրս որ ընդ նո-
սա, եւ զՍոմմայիսն ի Շաւէ քաղաքին
6 նոցա, Եւ զՔոռացիսն որ ի լերինս Սէ-
իրայ, մինչեւ [3]ցբեւեկնի ձորոյն՝ որ է
7 յանապատի անդ։ Եւ դարձան եկին յաղ-
բեւրն դատաստանի, այն ինքն է Կադէս,
եւ կոտորեցին զամենայն [4]իշխանս Ամա-
ղեկայ, եւ զԱմովրհացին զբնակեալն յԱ-
8 սասանթամար։ Եւ ել արքայ Սոդոմացւոց
եւ արքայ Գոմորացւոց եւ արքայ Ադա-
մացւոց եւ արքայ Սեբոյիմացւոց եւ
արքայ Բաղակայ որ է Սեգովր, եւ ճա-
կատեցան ընդ նոսա ի պատերազմ ի ձորն
9 [5]աղտից, Ընդ Քոդողոգոմորայ արքայի
Եղամայ, եւ ընդ Թադգաղայ արքայի ազ-
գաց, եւ Ամարփաղայ արքայի Սենաա-
րայ, եւ Արիովքայ արքայի Սելլասա-
10 րայ, չորք թագաւորք՝ ընդ հնգից։ Եւ
ի ձորն [5]աղտից ջրհորք, ջրհորք նաւ-
թի. եւ փախեաւ արքայ Սոդոմացւոց
եւ արքայ Գոմորացւոց, եւ անկան անդր.
եւ մնացեալքն փախեան ի լեռնակողմն։
11 Եւ առին զամենայն աւար Սոդոմացւոց
եւ Գոմորացւոց եւ զամենայն համբարս
12 նոցա եւ գնացին։ Առին եւ զՂովտ զեղ-
բօրորդին Աբրամու եւ զինչս նորա, եւ
երթային. [6]քանզի բնակեալ էր ի Սոդոմ։
13 Եւ եկն ոմն ի զերծելոց անտի, եւ
պատմեաց Աբրամու [7]յայնկոյս կացելոյ՝.
եւ նա էր բնակեալ առ կաղնեաւն Մամբ-
րէի Ամովրհացւոյն, եղբօրն Եսքողայ եւ
եղբօրն Աւնանայ, որ էին դաշնաւորք
14 Աբրամու։ Եւ իբրեւ լուաւ Աբրամ թէ
գերի վարեցաւ եղբօրորդին իւր Ղովտ,
համարեցաւ զընդոծինս իւր երեք հա-
15 րեւր եւ ութեւտասն[8]։ Եւ պնդեցաւ
զկնի նոցա գիշերի, ինքն եւ ծառայք իւր,
եւ եհար զնոսա մինչեւ ցՔոբաղ, որ է
16 ի ձախմէ Դամասկոսի։ Եւ դարձոյց զա-
մենայն աւարն [1]Սոդոմացւոց, եւ զՂովտ
զեղբօրորդին իւր եւ զամենայն սա-
ցուածս նորա դարձոյց, եւ զկանայս եւ
17 զժողովուրդն։ Եւ ել արքայ Սոդոմաց-
ւոց ընդ առաջ նորա՝ յետ դառնալոյ նո-
րա ի կոտորածէ Քոդողագոմորայ, եւ
թագաւորացն որ ընդ նմա էին ի ձորն
Շաւէ, այն ինքն է դաշտ թագաւորաց։
18 Եւ Մելքիսեդեկ արքայ Սաղեմայ եհան
հաց եւ գինի. քանզի քահանայ էր Ա-
19 ստուծոյ Բարձրելոյ. Եւ օրհնեաց զԱբ-
րամ եւ ասէ, Օրհնեալ է Աբրամ յԱ-
ստուծոյ Բարձրելոյ որ արար զերկինս եւ
20 զերկիր։ Օրհնեալ Աստուած Բարձրեալ
որ մատնեաց ի ձեռս քո զթշնամիս քո։
Եւ ետ նմա տասանորդս յամենայնէ։
21 Եւ ասէ արքայ Սոդոմացւոց ցԱբրամ,
Տուր ցիս զմարդիկդ, եւ զաւարդ քեզ
22 առ։ Եւ ասէ Աբրամ ցարքայն Սոդոմաց-
ւոց, Զգեմ զձեռն իմ առ Աստուած
Բարձրեալ որ արար զերկինս եւ զեր-
23 կիր, Եթէ ի չուանաթելէ մինչեւ
ի խրասս մի կօշկաց առից ես յամենայնէ
որ ինչ քո իցէ. զի մի՛ ասիցես թէ Ես
24 մեծացուցի զԱբրամ։ Բայց որչափ ինչ
կերան մանկտիք, եւ մասն արանցդ որ
եկին ընդ իս՝ Աւնան, Եսքող եւ Մամբ-
րէ, նոքա առցեն զբաժին իւրեանց։

---

[1] Եբր. Եհովա [2] Եբր. Սիդդիմ, որ է ծով աղի
[3] Եբր. ցԵղփառան [4] Եբր. երկիրն [5] Եբր. Սիդդիմ
[6] Եբր. եւ նա [7] Եբր. Եբրայեցւոյն [8] Եբր. [illegible]
յաւելու, եւ հետամուտ եղեւ նոցա մինչեւ ի Դան

Գլ. ԺԵ

1 Յետ բանիցս այսոցիկ եղեւ բան Տեառն
առ Աբրամ ի տեսլեան, եւ ասէ, Մի՛
երկնչիր, Աբրամ, ես [1]վերակացու եղէց
քեզ, եւ վարձք քո բազում եղիցին յոյժ։
2 Եւ ասէ Աբրամ, Տէր, Տէր, զի՞նչ տա-
րասցես ինձ, զի ես կորնչիմ անորդի,
եւ [2]որդի Մասեկայ ընդոծնի իմոյ, այն"
3 է Եղիազար Դամասկացի։ Եւ ասէ Աբ-
րամ, Որովհետեւ ինձ ոչ ետուր զա-
ւակ, ընդոծինն իմ ժառանգեսցէ զիս։
4 Եւ վաղվաղակի ձայն [3]Աստուծոյ եղեւ առ
նա եւ ասէ, Ոչ ժառանգեսցէ զքեզ դա,
այլ որ ելանէն ի քէն՝ նա ժառանգեսցէ
5 զքեզ։ Եւ եհան զնա արտաքս եւ ասէ
ցնա, Հայեաց ընդ երկինս, եւ թուեա
զաստեղս, եթէ կարասցես թուել զնոսա.
եւ ասէ ցնա, Այնպէս եղիցի զաւակ
6 քո։ Եւ հաւատաց [4]Աբրամ Աստուծոյ",
եւ համարեցաւ նմա յարդարութիւն։
7 Եւ ասէ ցնա, Ես եմ Տէր [5]Աստուած
քո", որ հանի զքեզ [6]յաշխարհէն Քաղ-
դեացւոց, տալ քեզ զերկիրդ զայդ ի ժա-
8 ռանգութիւն։ Եւ ասէ Աբրամ, Տէր,
Տէր, ի՞ւ գիտասցից թէ ժառանգեցից
9 զնա։ Եւ ասէ ցնա, Առ դու ինձ երինջ
երեմեան եւ քօշ երեմեան եւ խոյ ե-
10 րեմեան, եւ տատրակ եւ աղաւնի։ Եւ
առ զամենայն զայն, եւ յօշեաց զնոսա
ընդ մէջ, եւ եդ զնոսա դէմ ընդ դէմ
11 միմեանց. եւ զթռչունսն ոչ յօշեաց։ Եւ
իջանէին թռչունք ի վերայ յօշելոյ ան-
դամաթուին նոցա. եւ [7]նստէր առ նո-
12 քօք" Աբրամ։ Եւ մօտ ընդ մուտս ա-
րեւուն թմբրութիւն անկանէր ի վերայ
Աբրամու. եւ ահա ահ խաւարին[8] հասա-
13 նէր ի վերայ նորա։ Եւ [9]ասացաւ առ Աբ-
րամ, Գիտելով գիտասջիր, զի պան-
դուխտ եղիցի զաւակ քո յերկրի որ ոչ
իւր իցէ. եւ ծառայեցուսցեն զնոսա եւ
չարչարեսցեն, [5]եւ տառապեցուսցեն"
14 զնոսա ամս չորեքհարիւր. Բայց զազգն
որում ծառայեսցեն՝ դատեցայց ես. եւ
յետ այնորիկ ելցեն այսր բազում ստա-
15 ցուածովք։ Եւ դու երթիցես առ հարս
քո խաղաղութեամբ՝ [10]սնեալ ի բարւոք
16 ծերութեան։ Եւ ի չորրորդում ազգի
դարձցին այսրէն. քանզի չեւ եւս լցեալ
է մեղք Ամովրհացւոցն մինչեւ ցայժմ։
17 Եւ իբրեւ արեւն ի մուտս լինէր, բոցք հա-
սանէին, եւ ահա հնոց ծխեալ. եւ ճրա-
գայթք հրոյ անցանէին ընդ մէջ անդամոցն
18 յօշելոյ։ Յաւուր յայնմիկ եդ Տէր ուխտ
ընդ Աբրամու, եւ ասէ, Զաւակի քում
տաց զերկիրդ զայդ, ի գետոյն Եգիպտա-
19 ցւոց մինչեւ ի գետն մեծ Եփրատ, Զկի-
նեցիս եւ զԿենեզացիս եւ զԿեդմոնացիս
20 Եւ զՔետացիս եւ զՓերեզացիս եւ զՌա-
21 փիմացիս Եւ զԱմովրհացիս եւ զՔանանա-
ցիս եւ զԳերգեսացիս եւ զՅեբուսացիս։

Գլ. ԺԶ

1 Եւ Սարա, կին Աբրամու, ոչ ծնանէր
նմա. եւ էր նորա աղախին մի Եգիպտացի
2 որոյ անուն էր Ագար։ Եւ ասէ Սարա
ցԱբրամ [5]յերկրին Քանանացւոց", Որով-
հետեւ արգել զիս Տէր ի ծնանելոյ, արդ
մուտ առ աղախին իմ, զի արարից ինձ
որդի ի դմանէ։ Եւ ունկնդիր եղեւ Աբ-
3 րամ ձայնի Սարայի։ Եւ առ Սարա, կին
Աբրամու, զԱգար Եգիպտացի զաղախին
իւր, յետ տասն ամի բնակելոյ Աբրամու
յերկրին Քանանացւոց, եւ ետ զնա Աբ-
4 րամու առն իւրում կնութեան։ Եւ ե-
մուտ առ Ագար, եւ յղացաւ. իբրեւ ե-
տես թէ յղի է, արհամարհեցաւ տիկինն
5 իւր յաչս նորա։ Եւ ասէ Սարա ցԱբրամ,
Բռնանի է ինձ ի քէն. ես ետու զաղախինն
իմ ի գիրկս քո, եւ արդ իբրեւ ետես թէ
յղացաւ, արհամարհեցայ ես յաչս նորա.
դատ արասցէ [11]Աստուած ընդ իս եւ ընդ
6 քեզ։ Եւ ասէ Աբրամ ցՍարա, Ահաւասիկ
աղախինն քո ի ձեռս քո, արա նմա զինչ
հաճոյ է առաջի աչաց քոց։ Եւ չար-
չարեաց զնա Սարա, եւ փախեաւ յե-
7 րեսաց նորա։ Եգիտ զնա հրեշտակ Տեառն
յաղբեւր ջուրց յանապատի անդ, յաղ-
8 բեւրն որ ի ճանապարհին Սուրայ է. Եւ
ասէ [5]ցնա հրեշտակ Տեառն", Ագար, ա-
ղախինն Սարայի, ուստի՞ գաս կամ յո՞
երթաս։ Եւ ասէ, Յերեսաց Սարայի տիկ-
9 նոջ իմոյ փախուցեալ եմ ես։ Ասէ ցնա
հրեշտակն Տեառն, Դարձիր առ տիկին
քո եւ հնազանդ լեր ընդ ձեռամբ նորա։
10 Եւ ասէ ցնա հրեշտակն Տեառն, Բազ-
մացուցանելով բազմացուցից զզաւակ
11 քո, եւ անթիւ լիցի ի բազմութենէ։ Եւ
ասէ ցնա հրեշտակն Տեառն, Ահաւասիկ

[1]Եբր. վահան [2]Եբր. ժառանգ տան իմոյ [3]Եբր. Տեառն [4]Եբր. ի Տէր [5]Յեբր. պակասի [6]Եբր. յՈւրէ [7]Եբր. վանէր զնոսա [8]Եբրայեցին յա-ւելու, մեծ [9]Եբր. ասաց [10]Եբր. թաղեալ

[11]Եբր. Տէր

դու յղի իսկ ես. եւ ծնցես որդի, եւ կոչես-
ցես զանուն նորա [1]Իսմայէլ. զի լուաւ
12 Տէր տառապանաց քոց։ Եւ նա եղիցի
այր վայրագ. ձեռք նորա յամենեսին,
եւ ձեռք ամենեցուն ի նա. եւ յանդի-
ման ամենայն եղբարց իւրոց բնակեսցէ։
13 Եւ կարդաց Ագար զանուն Տեառն որ
խօսեցաւ ընդ նմա, եւ ասէ, Դու ես
Աստուած որ հայեցար յիս։ Քանզի ա-
սաց եթէ յանդիման իսկ տեսի զայն որ
14 երեւեցաւն ինձ։ Վասն այնորիկ կոչեաց
զջրհորն՝ Ջրհոր այնորիկ զոր յանդիմանն
տեսի. եւ ահա է այն ընդ Կադէս եւ
15 ընդ Բարադ։ Եւ ծնաւ Ագար՝ Աբրամու
որդի. եւ կոչեաց զանուն որդւոյն իւրոյ
16 զոր ծնաւ նմա Ագար՝ Իսմայէլ։ Եւ Ա-
բրամ էր ամաց ութսուն եւ վեցից յոր-
ժամ ծնաւ նմա Ագար զԻսմայէլ։

## ԳԼ. ԺԷ

1 Եւ եղեւ Աբրամ ամաց իննսուն եւ ի-
նունց. եւ երեւեցաւ Տէր [2]Աստուած Ա-
բրամու եւ ասէ ցնա, Ես եմ Աստուած [3]քո.
հաճոյ լեր" առաջի իմ, եւ լեր անարատ։
2 Եւ եդից զուխտ իմ ընդ իս եւ ընդ քեզ,
3 եւ բազմացուցից զքեզ յոյժ յոյժ։ Եւ ան-
կաւ Աբրամ ի վերայ երեսաց իւրոց. եւ
4 խօսեցաւ ընդ նմա Աստուած եւ ասէ, Ես
իմ ահաւասիկ ուխտ ընդ քեզ. եւ եղիցես
5 հայր բազմութեան ազգաց. Եւ ոչ կոչես-
ցի այսուհետեւ անուն քո Աբրամ, այլ ե-
ղիցի անուն քո Աբրահամ. զի հայր ազ-
6 գաց բազմաց եդի զքեզ։ Եւ աճեցուցից
զքեզ յոյժ, եւ եդից զքեզ յազգս. եւ թա-
7 գաւորք ի քէն ելցեն։ Եւ հաստատեցից
զուխտ իմ ընդ իս եւ ընդ քեզ, եւ ի մէջ
զաւակի քո յետ քո յազգս իւրեանց յուխտ
յաւիտենական, լինել քեզ Աստուած եւ
8 զաւակի քում յետ քո։ Եւ տաց քեզ եւ
զաւակի [4]քում զերկիրս զայս, յորում
բնակես պանդխտութեամբ, զամենայն
երկիրդ Քանանացւոց ի ժառանգութիւն
յաւիտենական. եւ եղէց նոցա Աստուած։
9 [5]Բայց դու" զուխտ իմ պահեսցես, եւ
10 զաւակ քո յետ քո յազգս իւրեանց։ Եւ
այս է ուխտ իմ զոր պահեսցես ընդ իս
եւ ընդ քեզ, եւ ի մէջ զաւակի քո յետ
11 քո յազգս իւրեանց. Թլփատեսցի ձեր

[1] Այսինքն, լուիցէ Աստուած  [2] Յեբր. զօրաւոր
[3] Եբր. Ամենակալ. գնա  [4] Եբր. քում յետ քո
[5] Եբր. Եւ ասէ Աստուած ցԱբրահամ, Եւ դու

ամենայն արու, եւ թլփատեսջիք զմար-
մին անթլփատութեան ձերոյ. եւ եղի-
ցի նշանակ ուխտին ընդ իս եւ ընդ ձեզ։
12 Եւ մանուկ ութօրեայ թլփատեսցի ձեր,
ամենայն արու յազգս ձեր, ընդոծինն եւ
արծաթագինն, եւ յամենայն օտարածնէ
13 որ ոչ իցէ ի զաւակէ քումմէ։ Թլփա-
տելով թլփատեսցի ընդոծին տան քո եւ
արծաթագինն քո. եւ եղիցի ուխտ իմ ի վե-
րայ մարմնոյ ձերոյ յուխտ յաւիտենական։
14 Արուն անթլփատ որ ոչ թլփատեսցէ
զմարմին անթլփատութեան իւրոյ յա-
ւուր ութերորդի՝ սատակեսցի անձնն այն
յազգէ իւրմէ. զի ցրեաց զուխտ իմ։
15 Եւ ասէ Աստուած ցԱբրահամ, Եւ Սա-
րայի կնոջ քո ոչ կոչեսցի անուն նորա
Սարա, այլ [6]Սառա եղիցի անուն նորա։
16 Եւ օրհնեցից զնա, եւ տաց քեզ ի նմանէ
որդի. եւ օրհնեցից զնա, եւ եղիցի յազգս,
եւ թագաւորք ազգաց ի նմանէ եղիցին։
17 Անկաւ Աբրահամ ի վերայ երեսաց իւրոց եւ
ծիծաղեցաւ. եւ խօսեցաւ ի սրտի իւրում
եւ ասէ, թէ Հարիւրամենի՞ որդի՞ լինիցի,
18 եւ Սառա՝ իննսնամենայ ծնանիցի՞։ Եւ ասէ
Աբրահամ ցԱստուած, Իսմայէլս այս կեց-
19 ցէ առաջի քո։ Եւ ասէ Աստուած [2]ցԱբ-
րահամ, Այո, ահա Սառա կին քո ծնցի քեզ
[7]որդի. եւ հաստատեցից զուխտ իմ ընդ
նմա յուխտ յաւիտենական, եւ ընդ զա-
20 ւակի նորա յետ նորա։ Եւ վասն Իսմայելի
ահա լուայ քեզ. եւ օրհնեցից զնա, եւ ա-
ճեցուցից զնա եւ բազմացուցից զնա յոյժ.
եւ երկոտասան ազգ ծնցի, եւ տաց զնա
21 յազգ մեծ։ Բայց զուխտ իմ հաստատեցից
ընդ Իսահակայ՝ զոր ծնցի քեզ Սառա ի
ժամանակի յայսմիկ ի միւսում տարւոջ։
22 Եւ վախճանեաց զխօսելն ընդ նմա, եւ
23 վերացաւ Աստուած յԱբրահամէ։ Եւ առ
Աբրահամ զԻսմայէլ զորդի իւր եւ զամե-
նայն զընդոծինս իւր եւ զամենայն զար-
ծաթագինս իւր եւ զամենայն արուարանց
որ էին ի տան Աբրահամու, եւ թլփա-
տեաց զմարմին անթլփատութեան նոցա
ի ժամանակի աւուրն այնորիկ, որպէս
24 խօսեցաւ ընդ նմա Աստուած։ Եւ Աբրա-
համ էր ամաց իննսուն եւ ինունց ի ժա-
մանակի յորում թլփատեաց զմարմին ան-
25 թլփատութեան իւրոյ։ Եւ Իսմայէլ որդի
նորա երեքտասանամենայ էր, յորժամ

[6] Այսինքն, կին իշխան  [7] Եբր. որդի, և կոչեսցես զանուն նորա Իսահակ

թլփատեաց զմարմին անթլփատութեան
26 իւրոյ։ Ի ժամանակի աւուրն այնորիկ
թլփատեցաւ Աբրահամ եւ Իսմայէլ որդի
27 նորա։ Եւ ամենայն արք տան նորա,
ընդոծինք եւ արծաթագինք որ էին յազ-
գաց օտարաց, [1]թլփատեաց զնոսա"։

ԳԼ. ԺԸ

1 Եւ երեւեցաւ նմա [2]Աստուած առ կաղ-
նեաւն Մամբրէի, մինչդեռ նստէր առ
2 դուրս խորանի իւրոյ ի միջօրէի։ Ամբար-
ձեալ զաչս իւր եւ ետես, եւ ահա արք
երեք կային ի վերոյ քան զնա. եւ իբրեւ
ետես, ընթացաւ ընդ առաջ նոցա ի
դրանէ խորանին իւրոյ, եւ երկիր եպագ
3 ի վերայ երկրի, Եւ ասէ, Տէր, եթէ գտի
շնորհս առաջի քո, մի՛ զանց առներ ի
4 ծառայէ քումմէ. Այլ առցի սակաւ մի
ջուր, եւ լուասցեն զոտս ձեր, եւ զո-
5 վասջիք ընդ ծառովս. Եւ առից հաց եւ
կերիջիք, եւ ապա երթիջիք զճանապարհ
ձեր. փոխանակ զի դարձարուք առ ծա-
ռայ ձեր։ Եւ ասեն, Այսպէս արա, որպէս
6 ասացերդ։ Եւ փութացաւ Աբրահամ ի խո-
րանն առ Սառա, եւ ասէ ցնա, Փութա
թրեա զրեւս երիս ալեր նաշհոյ, եւ ա-
7 րա նկանակս։ Եւ յանդեայ ընթացաւ Աբ-
րահամ, եւ առ որթ մի մատաղ եւ բարի
եւ ետ ցպատանին, եւ փութացոյց վաղ-
8 վաղակի հասուցանել։ Եւ առ կոգի եւ
կաթն եւ զորթն զոր հասոյց, եւ եդ ա-
ռաջի նոցա եւ կերան. եւ նա կայր ա-
9 ռաջի նոցա ընդ ծառովն։ Եւ ասեն ցնա,
Ո՞ւր է Սառա կին քո։ Նա պատասխանի
ետ եւ ասէ, Ահաւանիկ ի խորանի անդ է։
10 Եւ ասէ, Դարձեալ եկից առ քեզ [3]ի ժա-
մանակի յայսմիկ ի սոյն աւուրս", եւ ու-
նիցի որդի Սառա կին քո. եւ Սառա ունկն
դնէր առ դրան խորանին, քանզի յետոյ
11 նորա կայր։ Եւ Աբրահամ եւ Սառա ծե-
րացեալք էին եւ անցեալք զաւուրբք, եւ
պակասեալ էր ի Սառայէ լինել ի կանանց
12 օրէնսն։ Ծիծաղեցաւ Սառա ընդ միտս
եւ ասէ, [4]Որ ինչ ցայժմ ոչ եղեւ ինձ՝
ա՞րդ լինիցի". եւ տէր իմ ծերացեալ է։
13 Եւ ասէ Տէր ցԱբրահամ, Զի՞ է զի ծիծա-
ղեցաւ Սառա ընդ միտս իւր եւ ասէ, Թէ
Արդարեւ ծնանիցի՞մ, զի ահա ես պա-
14 ռաւեալ եմ։ Միթէ տկարանայցէ՞ առ ի
[5]յԱստուծոյ բան. ի ժամանակի յայսմիկ
դարձայց առ քեզ [3]ի սոյն աւուրս", եւ
15 եղիցի Սառայի որդի։ Ժխտեաց Սառա
եւ ասէ, Թէ Ոչ ծիծաղեցայ. քանզի
երկեաւ։ Եւ ասէ, Ոչ այդպէս, այլ ծի-
ծաղեցար։
16 Եւ յարուցեալ անտի արանցն հայե-
ցան ընդ երեսս Սոդոմացւոց [6]եւ Գոմո-
րացւոց". եւ Աբրահամ երթայր ընդ նո-
17 սա յուղարկել զնոսա։ Եւ ասէ Տէր, Միթէ
թաքուցա՞ ինչ ես յԱբրահամէ [6]ծառայէ
18 իմմէ" զոր ինչ գործելոց եմ. Այլ Աբրա-
համ լինելով լինիցի յազգ մեծ եւ ի բա-
զում, եւ օրհնեսցին ի նա ամենայն ազգք
19 երկրի։ Քանզի գիտէի եթէ պատուիրեսցէ
որդւոց իւրոց եւ տան իւրոյ յետ իւր՝
պահել զճանապարհս Տեառն եւ առնել
զարդարութիւն եւ զիրաւունս. եւ ածցէ
Տէր [6]Աստուած ի վերայ Աբրահամու զա-
20 մենայն զոր խօսեցաւ ընդ նմա։ Եւ ասէ
Տէր, Աղաղակ Սոդոմացւոց եւ Գոմորա-
ցւոց յաճախեաց, եւ մեղք նոցա մեծացան
21 յոյժ։ Եւ արդ իջեալ տեսից եթէ ըստ ա-
ղաղակին նոցա որ յիս հասանէ՝ վճարի-
22 ցե՞ն. ապա թէ ոչ՝ զի գիտացից։ Եւ դարձ-
եալ անտի արանցն եկին ի Սոդոմ. եւ
Աբրահամ կայր առաջի Տեառն։
23 Եւ մատուցեալ Աբրահամ ասէ, Միթէ
կորուսանիցե՞ս զարդարն ընդ ամպարշ-
տին, [6]եւ լինիցի՞ արդարն իբրեւ զամ-
24 պարիշտն." Եթէ իցեն յիսուն արդար ի
քաղաքի, կորուսանիցե՞ս զնոսա, եւ ո՞չ
ներիցես ամենայն տեղւոյն վասն յիսուն
25 արդարոյն եթէ իցեն ի նմա. Քաւ լիցի
քեզ առնել զայն բան. սպանանել զար-
դարն ընդ ամպարշտի, եւ լինիցի ար-
դարն իբրեւ զամպարիշտն. քաւ լիցի
քեզ որ դատիս զամենայն երկիր, մի՛ ա-
26 րասցես զայն դատաստան։ Եւ ասէ Տէր,
Եթէ գտցի ի Սոդոմ յիսուն արդար ի քա-
ղաքի անդ, թողացուցից ամենայն տեղ-
27 ւոյն վասն նոցա։ Պատասխանի ետ Աբ-
րահամ եւ ասէ, Այժմ սկսայ խօսել ընդ
28 Տեառն, բայց ես հող եմ եւ մոխիր. Եթէ
պակասիցեն քան զյիսուն արդարս հնգիւ-
չափ, կորուսանիցե՞ս վասն հնգիցն զա-
մենայն քաղաքն։ Եւ ասէ, Ոչ կորուսից,
29 եթէ գտցի անդ քառասուն եւ հինգ։ Եւ
յաւել եւս խօսել ընդ նմա եւ ասէ, Իսկ
եթէ գտցի անդ քառասուն։ Եւ ասէ, Ոչ
30 կորուսից վասն քառասնիցն։ Եւ ասէ,

[1] Եբր. թլփատեցան ընդ նմա [2] Եբր. Տէր
[3] Եբր. ըստ ժամանակի կենաց [4] Եբր. Եւ արդ
զի ծերացայ, եղիցի ինձ փափկութի՞ւն
[5] Եբր. Տեառնէ [6] Եբր. [illegible]

[1]Մի՛թէ իցէ ինչ, Տէր,՛՛ եթէ խօսիցիմ.
Իսկ եթէ գտցի անդ երեսուն։ Եւ ասէ,
Ոչ կորուսից, եթէ գտցի անդ երեսուն։
31 Եւ ասէ, Որովհետեւ կալայ խօսել ընդ
Տեառն. եթէ գտցի անդ քսան։ Եւ ասէ,
32 Ոչ կորուսից վասն քսանիցն։ Եւ ասէ,
[1]Մի՛թէ իցէ ինչ, Տէր՛՛, եթէ խօսիցայց եւս
միւս անգամ. եթէ գտանիցի անդ տասն։
Եւ ասէ, Ոչ կորուսից վասն տասանցն։
33 Եւ գնաց Տէր իբրեւ լռեաց ի խօսելոյ
անտի ընդ Աբրահամու, եւ Աբրահամ
դարձաւ ի տեղի իւր։

ԳԼ. ԺԹ

1 Եւ եկին երկու հրեշտակքն ի Սոդոմ ընդ
երեկս. եւ Ղովտ նստէր առ դրան Սո-
դոմացւոցն։ Իբրեւ ետես Ղովտ, յարեաւ
ընդ առաջ նոցա, եւ երկիր եպագ ի վե-
2 րայ երեսաց իւրոց յերկիր, Եւ ասէ, Ա-
հաւասիկ ես, տեարք, եկայք ի տուն
ծառայի ձերոյ, հանգերուք, եւ լուացէք
զոտս ձեր. եւ կանխեալ ընդ առաւօտս
երթիջիք զճանապարհ ձեր։ Եւ ասեն, Ոչ,
3 այլ ի քաղաքամիջի աստ ագցուք։ Եւ
բռնադատեաց զնոսա յոյժ, եւ խոտորե-
ցան առ նա եւ մտին ի տուն նորա. եւ
արար նոցա ընթրիս, եւ բաղարջ եփեաց
նոցա եւ կերան։
4 Մինչչեւ ի քուն մտեալ էր նոցա, եւ
արք քաղաքին Սոդոմացւոց պատեցին
զտունն յերիտասարդաց մինչեւ ցծերս,
5 ամենայն ժողովուրդն ի միասին. Եւ կո-
չէին արտաքս զՂովտ եւ ասէին ցնա,
Ո՞ւր են արքն որ մտին առ քեզ գիշերի,
ած զնոսա առ մեզ զի գիտասցուք զնո-
6 սա։ Եւ ել առ նոսա Ղովտ արտաքոյ
դրանն, եւ զդուռն ձգեաց զկնի իւր,
7 Եւ ասէ ցնոսա, Քաւ լիցի ձեզ, եղբարք,
8 մի՛ գործէք զայդ չարիս։ Են իմ երկու
դստերք որ զայր ոչ գիտեն, հանից զնո-
սա առ ձեզ, եւ արարէք ընդ նոսա որպէս
հաճոյ իցէ ձեզ. բայց միայն արանցդ
այդոցիկ մի՛ ինչ մեզ առնիցէք, որով-
հետեւ մտին ընդ յարկաւ գերանաց ի-
9 մոց։ Եւ ասեն, Ի բաց կաց. մտեր բնակել
պանդխտութեամբ, միթէ եւ դատաստա՞ն
եւս դատել. այժմ եւ զքեզ եւս չարչարես-
ցուք առաւել քան զնոսա։ Եւ բռնադա-
տէին զայրն, զՂովտ, յոյժ, եւ մերձ էին
10 զդուռն խորտակել։ Եւ ձգեալ արանցն
զձեռս իւրեանց կորզեցին յներքեւս
զՂովտ ի տուն անդր, եւ զդուրս տանն
11 փակեցին. Եւ զարսն որ առ դուրս տանն
կային՝ հարին կուրութեամբ ի փոքուէ
մինչեւ ցմեծն, եւ լքան խնդրել զդուրսն։
12 Եւ ասեն արքն ցՂովտ, Է՞ ոք քո աստ
փեսայ կամ ուստերք կամ դստերք, կամ այլ
ոք քո իցէ՞ ի քաղաքի աստ. հան զնոսա
13 ի տեղւոջէ յայսմանէ։ Զի կորուսանելոց
եմք մեք զքաղաքս զայս. զի բարձրա-
ցաւ աղաղակ սոցա առաջի Տեառն. եւ
14 առաքեաց զմեզ Տէր սատակել զսա։ Ել
Ղովտ եւ խօսեցաւ ընդ փեսայս իւր որ
առնլոց էին զդստերս նորա, եւ ասէ, Ա-
րիք եւ ելէք ի տեղւոջէ աստի յայսմա-
նէ, զի սատակէ Տէր զքաղաքս։ Եւ
թուէր ծաղր առնել յաչս փեսայից իւրոց։
15 Եւ իբրեւ եղեւ առաւօտ, փութացու-
ցանէին հրեշտակքն զՂովտ եւ ասէին,
Արի առ զկին քո եւ զերկուս դստերս
քո զոր ունիս, եւ ել աստի, զի մի՛ եւ դու
կորնչիցիս ընդ անօրէնութիւնս քաղա-
16 քիդ։ Եւ [2]նոքա խռովեցան՛՛. եւ կալան
հրեշտակքն զձեռանէ նորա եւ զձեռանէ
կնոջ նորա եւ զձեռանէ երկուց դստե-
րաց նորա, զի խնայեաց Տէր ի նա, եւ
հանին զնա եւ եղին արտաքոյ քաղաքին։
17 Եւ եղեւ իբրեւ հանին զնոսա արտաքս,
ասեն, Ապրեցո զանձն քո, մի՛ [3]զհանդայ-
ցես յետս, եւ մի՛ կայցես յամենայն [4]կող-
մանս աշխարհիդ՛՛. զերծիր ի լեառն, գու-
18 ցէ ընդ նոսա ըմբռնիցիս։ Եւ ասէ Ղովտ
19 ցնոսա, Աղաչեմ, Տէր. Որովհետեւ եգիտ
ծառայ քո ողորմութիւն առաջի քո, եւ
մեծ արարեր զարդարութիւն քո զոր առ-
նես յիս ապրել անձին իմոյ. եւ արդ ես
ոչ կարեմ զերծանել ի լեառն, գուցէ հա-
սանիցեն ինձ չարիքն եւ մեռանիցիմ։
20 Ահա քաղաքս այս մերձ է անկանել ի նա,
որ է փոքրիկ, անդ ապրեցայց. (եւ չէ՞
փոքր,) եւ կեցցէ անձն իմ [5]վասն քո՛՛։
21 Եւ ասէ ցնա, Ահաւասիկ արարի մեծա-
րանս երեսաց քոց եւ ի բանիդ յայդմիկ՝
չկործանել զքաղաքն վասն որոյ խօսե-
22 ցար։ Եւ արդ փութա զերծանել ի նա,
զի ոչ կարեմ առնել իրս ինչ մինչեւ ան-
կանիցիս անդր. վասն այնորիկ կոչեաց
23 զանուն քաղաքին այնորիկ [6]Սեգովր։ Ա-
րեգակն ծագեաց յերկիր, եւ Ղովտ եմուտ
24 ի Սեգովր։ Եւ Տէր տեղաց ի Սոդոմ եւ

[1]Եբր. Աղէ՛, մի բարկասցի Տէր իմ,

[2]Եբր. Նա դանդաղէր [3]Եբր. Հայեսցիս [4]Եբր. դաշտիդ [5]Եբր. գոլով [6]Այսինքն, փոքր

ի Գոմոր ծծումբ եւ հուր ի Տեառնէ յերկ-
25 նից, Եւ կործանեաց զքաղաքսն զայնո-
սիկ եւ զամենայն [1]կողմանսն եւ զամե-
նայն բնակիչս քաղաքացն եւ [2]զամենայն
26 բոյս" երկրին։ Եւ [3]դարձաւ կինն Ղովտայ
յետս, եւ եղեւ արձան աղի։
27 Եւ կանխեաց Աբրահամ ընդ առաւօտն
28 ի տեղին ուր կայր առաջի Տեառն, Եւ
հայեցաւ յերեսս Սոդոմայեցւոց եւ Գոմո-
րացւոց, եւ յամենայն երեսս երկրի [4]գա-
ւառին. եւ ետես եւ ահա ելանէր բոց
երկրին իբրեւ մրրիկ հնոցի։
29 Եւ եղեւ ի սատակել [5]Տեառն զամե-
նայն քաղաքսն շուրջ զբնակութեամբն"
յիշեաց Աստուած զԱբրահամ, եւ եհան
արձակեաց զՂովտ ի միջոյ կործանմանն,
ի կործանել Տեառն զքաղաքսն յորս
բնակեալ էր ի նոսա Ղովտ։
30 Եւ ել Ղովտ ի Սեգովրայ, եւ նստէր
ի լերինն, եւ երկոքին դստերք նորա ընդ
նմա. քանզի երկեաւ բնակել ի Սեգովր.
եւ բնակեաց յայրի անդ ինքն եւ երկոքին
31 դստերք նորա ընդ նմա։ Եւ ասէ երէցն
ցկրտսերն, Հայր մեր ծերացեալ է, եւ չիք
ոք յերկրի որ մտանիցէ առ մեզ, որպէս
32 օրէն է ամենայն երկրի. Եկ եւ արբու-
ցուք հօր մերում գինի, եւ ննջեսցուք
ընդ նմա, եւ յարուսցուք ի հօրէ մերմէ
33 զաւակ։ Եւ արբուցին հօրն իւրեանց գի-
նի ի գիշերին յայնմիկ. եւ եմուտ երէցն
ննջեաց ընդ հօրն իւրում [6]զգիշերն զայն".
եւ ոչ գիտէր ի ննջելն նորա եւ ի յառնել։
34 Եւ եղեւ ի վաղիւ անդր եւ ասէ երէցն
ցկրտսերն, Ահա ննջեցի ես երէկ ընդ
հօր իմում. արբուսցուք նմա գինի եւ
ի գիշերիս յայսմիկ, եւ մուտ ննջեա ընդ
նմա, եւ յարուսցուք զաւակ ի հօրէ մեր-
35 մէ։ Եւ արբուցին եւ յայնմ գիշերի զգինի
հօրն իւրեանց, եւ եմուտ կրտսերն եւ
ննջեաց ընդ հօրն իւրում. եւ ոչ գիտէր
36 ի ննջելն նորա եւ ի յառնել։ Եւ յղացան
երկոքին դստերքն Ղովտայ ի հօրէն իւր-
37 եանց։ Եւ ծնաւ երէցն որդի, եւ կոչ-
եաց զանուն նորա Մովաբ. [6]ասէ, Ի հօրէ
իմմէ։" Նա է հայր Մովաբացւոց մինչեւ
38 ցայսօր ժամանակի։ Ծնաւ եւ կրտսերն
որդի, եւ կոչեաց զանուն նորա [7]Ամման.
[6]ասէ, Որդի ազգի իմոյ։" Նա է հայր
Ամմանացւոց մինչեւ ցայսօր ժամանակի։

[1] Եբր. դաշտն [2] Եբր. զբոյս [3] Եբր. Հայեցաւ
[4] Եբր. դաշտին [5] Եբր. Աստուծոյ զքաղաքս
դաշտին, [6] Յեբր. պակաս [7] Եբր. Բենամմի

## ԳԼ. Ի

1 Եւ չուեաց անտի Աբրահամ յերկիրն հա-
րաւոյ, եւ բնակեցաւ ընդ Կադէս եւ ընդ
2 Սուր. եւ պանդխտեցաւ ի Գերարա։ Եւ
ասաց Աբրահամ վասն Սառայի կնոջն իւ-
րոյ թէ Քոյր իմ է. եւ առաքեաց Աբիմե-
լէք արքայ Գերարացւոց, եւ առ զՍառա։
3 Եւ եկն Աստուած առ Աբիմելէք ի տես-
լեան գիշերոյ, եւ ասէ, Ահա մեռանիս
վասն կնոջդ զոր առեր, զի կին առնա-
4 կին է։ Բայց Աբիմելէք ոչ մերձեցաւ ի
նա, եւ ասէ, Տէր, զազգ մի [6]զանգէտ
5 եւ" զարդար կորուսանիցե՞ս։ Ո՞չ ապա-
քէն նա ասաց ցիս, Քոյր իմ է, եւ սա
ասաց ցիս, Եղբայր իմ է. եւ ես սրբու-
թեամբ սրտի եւ արդարութեամբ ձեռաց
6 արարի զայս։ Եւ ասէ ցնա Աստուած ի
տեսլեանն, Ես գիտացի զի սրբութեամբ
սրտի արարեր դու զայդ, եւ խնայեցի
ես ի քեզ՝ չմեղանչել քեզ յիս. վասն
այնորիկ ոչ ետու թոյլ քեզ մերձենալ ի
7 դա։ Բայց արձակեա զկինդ յայր իւր.
զի այր մարգարէ է, եւ արասցէ աղօթս
վասն քո եւ կեցցես. ապա թէ ոչ տա-
ցես, գիտեա զի [8]մեռանիս դու եւ ամե-
նայն որ ինչ քո է։
8 Եւ կանխեաց Աբիմելէք ընդ առաւօտն
եւ կոչեաց զամենայն զծառայս իւր, եւ
խօսեցաւ զամենայն բանս զայսոսիկ յա-
կանջս նոցա. եւ զահի հարան [6]ամենայն
9 մարդիկն յոյժ։ Եւ կոչեաց Աբիմելէք
զԱբրահամ, եւ ասէ ցնա, Զի՞նչ գոր-
ծեցեր դու զայդ ընդ մեզ. միթէ մեղա՞ք
ինչ քեզ, զի ածեր ի վերայ իմ եւ ի վե-
րայ թագաւորութեան իմոյ մեղս մեծա-
մեծս. գործ զոր ոչ ոք գործէ՝ գործեցեր
10 ընդ իս։ Եւ ասէ Աբիմելէք ցԱբրահամ,
11 Զի՞նչ տեսեալ արարեր զբանդ զայդ։ Եւ
ասէ Աբրահամ, Զի ասացի թէ գուցէ ոչ
գուցէ աստուածպաշտութիւն ի տեղւոջս
յայսմիկ, եւ զիս սպանանիցեն վասն
12 կնոջդ իմոյ։ Բայց արդարեւ քոյր իմ է
ի հօրէ եւ ոչ ի մօրէ, եւ եղեւ ինձ կին։
13 Եւ եղեւ յորժամ եհան զիս Աստուած ի
տանէ հօր իմոյ, եւ ես ասացի ցդա, Զայս
[9]արդարութիւն արասցես ընդ իս. յամե-
նայն տեղիս ուր եւ երթիցուք, ասաս-
14 ջիր զինէն թէ Եղբայր իմ է։ Եւ առ Ա-
բիմելէք [6]հազար սատեր, եւ" արջառ եւ

[8] Եբր. մահու մեռանիցիս [9] Կամ, շնորհս

ոչխար, ծառայս եւ աղախնայս, եւ ետ
Աբրահամու, եւ ետ նմա զՍառա զկին
15 իւր։ Եւ ասէ Աբիմելէք [1]ցԱբրահամ,
Ահաւասիկ երկիրդ իմ առաջի քո, ուր
16 հաճոյ իցէ քեզ՝ բնակեաց։ Եւ ցՍառա
ասէ, Ահա ետու հազար սատեր եղբօր
քում, այն եղիցի քեզ [2]ի պատիւ երեսաց
քոց եւ ամենայն կանանց որ ընդ քեզ
17 են. եւ զամենայն արդար խօսեսցիս"։ Եւ
եկաց յաղօթս Աբրահամ առ Աստուած.
եւ [3]բժշկեաց զԱբիմելէք եւ զկին նորա
18 եւ զաղախնայս նորա, եւ ծնանէին. Զի
փակելով փակեաց Տէր արտաքուստ զա-
մենայն արգանդ ի տան Աբիմելեքայ վասն
Սառայի կնոջ Աբրահամու։

## Գլ. ԻԱ

1 Եւ Տէր յայց ել Սառայի որպէս եւ ա-
սաց, եւ արար Տէր Սառայի որպէս եւ
2 խօսեցաւ։ Եւ յղացաւ եւ ծնաւ Սառա
Աբրահամու որդի ի ծերութեան[4], ըստ
ժամանակին որպէս եւ խօսեցաւ ընդ նմա
3 Աստուած։ Եւ կոչեաց Աբրահամ զանուն
որդւոյ իւրոյ զոր ծնաւ նմա Սառա՝ [5]Ի-
4 սահակ։ Եւ թլփատեաց Աբրահամ զԻսա-
հակ զորդի իւր յութերորդ աւուր, որ-
պէս եւ պատուիրեաց նմա [1]Տէր Աստ-
5 ուած։ Եւ Աբրահամ հարիւրամեան էր
յորժամ եղեւ նմա Իսահակ որդի իւր։
6 Եւ ասէ Սառա, [6]Ծաղր արար զիս Աս-
տուած. զի որ եւ լսիցէ՝ ուրախ լինիցի ընդ
7 իս։ Եւ ասէ, Ո՞վ պատմեսցէ Աբրահա-
մու եթէ ստնտու լինիցի մանուկ՝ Սառա. զի
8 ծնայ որդի ի ծերութեան [7]իմում։ Եւ աճ-
եաց մանուկն, եւ հատուցաւ ի ստենէ.
եւ արար Աբրահամ ուրախութիւն մեծ
յաւուր յորում հատուցաւ ի ստենէ Իսա-
հակ որդի իւր։
9 Եւ տեսեալ Սառայի զորդին Ագարայ
Եգիպտացւոյ որ եղեւ Աբրահամու, զի
[8]խաղայր ընդ Իսահակայ որդւոյ իւրում",
10 Ասէ ցԱբրահամ, Ի բաց հան զաղախինդ
եւ զորդի դորա, զի մի՛ ժառանգեսցէ որ-
դի աղախնոյդ ընդ որդւոյ իմում Իսահա-
11 կայ։ Եւ խիստ թուեցաւ բանն առաջի
12 Աբրահամու վասն որդւոյ նորա։ Եւ ասէ
Աստուած ցԱբրահամ, Մի՛ ինչ խիստ
թուեսցի առաջի քո վասն մանկանն եւ
վասն աղախնոյն. զամենայն զոր ինչ ա-
սիցէ քեզ Սառա՝ լուր ձայնի նորա. զի
13 Իսահակաւ կոչեսցի քեզ զաւակ։ Բայց
զորդի աղախնոյդ արարից յազգ [1]մեծ, զի
14 սերմն քո է։ Յարեաւ Աբրահամ ընդ ա-
ռաւօտն, եւ առ հաց եւ տիկ ջրոյ եւ ետ
ցԱգար, եւ եդ յուս [9]նորա զմանուկն",
եւ արձակեաց զնա. եւ երթեալ մոլոր-
եալ շրջէր յանապատի անդ առ Ջրհորովն
15 երդման։ Եւ նուաղեաց ջուր ի տկէ ան-
տի. եւ ընկէց զմանուկն ի ներքոյ միոյ
16 [10]եղեւնի ծառոյ". Եւ երթեալ նստաւ յան-
դիման նորա ի բացեայ իբրեւ վտաւա-
նաւ. զի ասէր թէ Ոչ տեսից զմահ որ-
դւոյն իմոյ. եւ նստէր յանդիման նորա.
17 ձայն բարձեալ [1]մանկանն լայր։ Եւ լուաւ
Աստուած ձայնի մանկանն [1]ի տեղւոջէն
ուր էր", եւ կոչեաց [11]Աստուած զԱգար
յերկնից եւ ասէ ցնա, Զի՞նչ է այդ, Ագար.
մի՛ երկնչիր, զի լուաւ Աստուած ձայնի
18 որդւոյ քո ի տեղւոջէ այտի ուր է։ Արի առ
զմանուկն քո, եւ զօրացո զնա ձեռամբ.
19 զի յազգ մեծ արարից զնա։ Եւ եբաց
Աստուած զաչս նորա, եւ ետես ջրհոր
ջրոյ [1]կենդանւոյ. եւ չոգաւ ելից զտիկն
20 ջրով եւ արբոյց մանկանն։ Եւ էր Աս-
տուած ընդ մանկանն, եւ աճեաց [12]եւ
21 եղեւ աղեղնաւոր։ Եւ բնակէր յանապա-
տին Փառանու, եւ առ նմա մայր նորա
կին յերկրէն Եգիպտացւոց։
22 Եւ եղեւ ի ժամանակին յայնմիկ խօսե-
ցաւ Աբիմելէք եւ[1] Ոքոզաթ տաճարապետ
նորա եւ" Փիքող սպարապետ զօրաց նո-
րա, եւ ասեն ցԱբրահամ, Աստուած ընդ
23 քեզ է յամենայնի զինչ եւ գործես։ Արդ
երդուիր ինձ յԱստուած չմեղանչել ինձ,
եւ մի՛ զաւակի իմում եւ [13]անուան իմոյ.
այլ ըստ արդարութեանն զոր արարի
ընդ քեզ՝ արասցես ընդ իս, եւ երկրիս
24 յորում բնակեալ ես ի սմա։ Եւ ասէ Աբ-
25 րահամ, Ես երդնում։ Եւ յանդիմանեաց
Աբրահամ զԱբիմելէք վասն ջրհորոյն ջրոյ
26 զորս հանին ծառայքն Աբիմելեքայ։ Եւ
ասէ ցնա Աբիմելէք, Ոչ գիտացի ո՛ արար
զայն իրս, եւ դու ոչ պատմեցեր ինձ,

---

[1] Յեբր. [illegible] [2] Եբր. ի ծածկոյթ աչաց, ամե-
նեցուն որ ընդ քեզ են, և ընդ ամենեսին. և նա
յանդիմանեցաւ [3] Եբր. բժշկեաց Աստուած
[4] Եբրայեցին յաւելու, նորա [5] Ա. յոյնն, ծաղր
կամ ուրախութիւն [6] Կամ, Ուրախ [7] Եբր. նո-
րա [8] Եբր. ծաղր առնէր

[9] Եբր. նորա, և զմանուկն [10] Եբր. ի մացառաց
[11] Հրեշտակ Աստուծոյ [12] Եբր. և բնակէր յա-
նապատին, և [13] Եբր. թոռին

27 եւ իմ ոչ էր լուեալ՝ բայց այսօր։ Եւ առ
Աբրահամ արջառս եւ ոչխարս, եւ ետ
Աբիմելեքայ. եւ եդին երկոքին ուխտ
28 ընդ միմեանս։ Եւ կացոյց Աբրահամ եւթն
29 որոջ ոչխարաց միայն։ Եւ ասէ Աբիմե-
լէք ցԱբրահամ, Զի՞նչ են այս եւթն որոջք
30 ոչխարաց զորս կացուցեր միայն։ Եւ ա-
սէ, Զայդ եւթն որոջս առցես յինէն,
զի եղիցի ինձ ի վկայութիւն, թէ ես
31 փորեցի զՋրհորդ զայդ։ Վասն այնորիկ
անուանեաց զանուն տեղւոյն այնորիկ
[1]Ջրհոր երդման". զի անդ երդուան եր-
32 կոքին միմեանց։ Եւ անդ եդին ուխտ առ
Ջրհորին երդման։ Յարեաւ Աբիմելէք
եւ [2]Ոքոզաթ առաճապետ նորա եւ"
Փիքող սպարապետ զօրաց նորա, եւ
դարձան անդրէն յերկիրն Փղշտացւոց։
33 Եւ տնկեաց Աբրահամ ատունկ առ Ջրհո-
րովն երդման, եւ կարդաց անդ զանուն
34 Տեառն, Աստուած յաւիտենական։ Եւ
պանդխտեցաւ Աբրահամ յերկրին Փղշտա-
ցւոց աւուրս բազումս։

ԳԼ. ԻԲ

1 Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ փորձեաց
Աստուած զԱբրահամ եւ ասէ ցնա, Աբ-
րահամ, [2]Աբրահամ. եւ նա ասէ, Ահա-
2 ւասիկ եմ։ Եւ ասէ ցնա, Առ դու զորդիդ
քո [3]սիրելի զոր սիրեցեր՝ զԻսահակ, եւ
գնա դու [4]յերկիր բարձր", եւ հանցես
զդա անդ յողջակէզ ի վերայ միոյ լերանց
3 յորոց ասացից քեզ։ Եւ յարեաւ Աբրահամ
ընդ առաւօտն, համետեաց զէշ իւր, եւ
առ ընդ իւր երկուս ծառայս, եւ զԻսահակ
զորդի իւր. եւ պատառեաց փայտ յող-
ջակէզ, եւ յարեաւ գնաց. եւ եկն ի տե-
4 ղին զոր ասաց նմա Աստուած։ Եւ յա-
ւուրն երրորդի համբարձ Աբրահամ զաչս
5 իւր եւ ետես զտեղին ի հեռաստանէ։ Եւ
ասէ Աբրահամ ցպատանիս իւր, Նստա-
րուք դուք այդր հանդերձ իշովդ, եւ ես եւ
պատանեակդ երթիցուք մինչեւ ցանդր,
եւ երկիր պագցուք եւ դարձցուք առ
6 ձեզ։ Եւ առ Աբրահամ զփայտ ողջակի-
զին, եւ եդ ի վերայ Իսահակայ որդ-
ւոյ իւրոյ. եւ առ ի ձեռն զհուրն եւ
զսուրն. եւ գնացին երկոքեան ի միասին։
7 Եւ ասէ Իսահակ ցԱբրահամ հայր իւր,
Հայր. եւ նա ասէ, Զի՞ է, որդեակ. եւ
նա ասէ, Ահա հուր եւ ահա փայտ, ո՞ւր
8 է ոչխար յողջակէզ։ Եւ նա ասէ, Աստ-
ուած տեսցէ իւր ոչխար յողջակէզ, որդ-
9 եակ։ Գնացին երկոքեան ի միասին։ Եւ
եկին ի տեղին զոր ասաց նմա Աստուած.
անդ շինեաց սեղան Աբրահամ, եւ եդ
ի վերայ զփայտն. եւ կապեաց զԻսա-
հակ զորդի իւր, եւ եդ զնա ի սեղանն
10 ի վերայ փայտին։ Եւ ձգեաց Աբրահամ
զձեռն առնուլ զսուրն եւ զենուլ զորդին
11 իւր։ Եւ կոչեաց զնա հրեշտակ Տեառն
յերկնից եւ ասէ, Աբրահամ, Աբրահամ.
12 եւ նա ասէ ցնա, Ահաւասիկ եմ։ Եւ ա-
սէ, Մի՛ մխեր զձեռն քո ի պատանե-
եակդ, եւ մի՛ ինչ առներ դմա. զի այժմ
գիտացի թէ երկիւղած ես դու յԱստու-
ծոյ, եւ ոչ խնայեցեր յորդւոյ քո [5]սիրե-
13 լի վասն իմ։ Համբարձ Աբրահամ զաչս
իւր եւ ետես, եւ ահա խոյ մի [6]կախ-
եալ կայր զծառոյն սաբեկայ զեղջերաց".
եւ գնաց Աբրահամ առ զխոյն, եւ եհան
զնա յողջակէզ փոխանակ Իսահակայ որ-
14 դւոյ իւրոյ։ Եւ կոչեաց Աբրահամ զա-
նուն տեղւոյն այնորիկ Տէր [7]ետես. զի
ասիցեն ցայսօր, Ի լերինն յայնմիկ Տէր
15 [8]երեւեցաւ։ Եւ կոչեաց հրեշտակ Տեառն
զԱբրահամ երկիցս անգամ յերկնից եւ
16 ասէ, Յանձն իմ երդուայ, ասէ Տէր,
փոխանակ զի արարեր դու զբանդ զայդ,
եւ ոչ խնայեցեր յորդւոյ քո [8]սիրելի վասն
17 իմ, Այո, օրհնելով օրհնեցից զքեզ, եւ
բազմացուցանելով բազմացուցից զզա-
ւակ քո իբրեւ զաստեղս երկնից բազ-
մութեամբ, եւ իբրեւ զաւազ առ ափն
ծովու. եւ ժառանգեսցէ զաւակ քո զքա-
18 ղաքս հակառակորդաց իւրոց. Եւ օրհ-
նեսցին ի զաւակի քում ամենայն ազգք
երկրի, փոխանակ զի լուար ձայնի իմում։
19 Դարձաւ Աբրահամ առ պատանիսն իւր,
եւ յարուցեալ գնացին ի միասին ի Ջրհորն
երդման. եւ բնակեցաւ Աբրահամ առ
Ջրհորովն երդման։
20 Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ պատ-
մեցաւ Աբրահամու, թէ ահա ծնաւ Մեղ-
քա եւ նա որդիս Նաքովրայ եղբօր քում.
21 [9]ԶՈւզ զանդրանիկն նորա, եւ զԲաւ
զեղբայր նորա եւ զԿամուէլ հայր [10]Ասոր-
22 ւոց, Եւ զՔասադ եւ զԱզաւ եւ զՓաղդաս

[1]Եբր. Բերսաբէէ [2]Յեբր. [illegible] [3]Եբր. զմիամօր [4]Եբր. յերկիրն Մորիա

[5]Եբր. միամօր [6]Եբր. կալեալ կայր ի մացառս յեղջերաց իւրոց [7]Եբր. տեսցէ [8]Եբր. երեւեսցի [9]Եբր. Զհուս [10]Եբր. Արամայ

23 եւ զՅետղափ եւ զԲաթուէլ ։ Եւ Բա-
թուէլ ծնաւ զՌեբեկա . ութ սոքա որդիք
զորս ծնաւ Մեղքա Նաքովրայ եղբօրն
24 Աբրահամու ։ Եւ հարճն նորին որոյ էր
անուն Ռեէմա , ծնաւ եւ նա զՏաբեկ եւ
զԳաամ եւ զՏաքոս եւ զՄովքա ։

### Գլ. ԻԳ

1 Եւ եղեն կեանք Սառայի հարիւր եւ քսան
2 եւ եւթն [1]ամ ։ Եւ մեռաւ Սառա ի քա-
ղաքի Արբոկայ [2]ի ձորն, այն ինքն է Քեբ-
րոն յերկրին Քանանացւոց . եւ եկն Աբ-
րահամ կոծել զՍառա եւ սուգ առնուլ ։
3 Եւ յարեաւ Աբրահամ ի մեռելոյ անտի
իւրմէ , եւ խօսեցաւ ընդ որդիսն Քետայ
4 եւ ասէ , Պանդուխտ եւ նժդեհ եմ ես ի
միջի ձերում . արդ տուք ինձ ստացուած
գերեզմանի ընդ ձեզ եւ թաղեցից զմեռ-
5 եալս իմ[3]։ Պատասխանի ետուն որդիքն
6 Քետայ Աբրահամու եւ ասեն , Ունկն դիր
մեզ , Տէր . [4]թագաւոր յԱստուծոյ ես ի
միջի մերում . յընտիր շիրմաց մերոց
թաղեա զմեռեալդ քո . զի ոչ ոք ի մէնջ
7 արգելու ի քէն զշիրիմս ։ Յարեաւ Աբ-
րահամ եւ երկիր եպագ ժողովրդեան
8 երկրին , որդւոցն Քետայ . Եւ խօսեցաւ
ընդ նոսա Աբրահամ եւ ասէ , Եթէ յօ-
ժարիցէք ի մտի ձերում թաղել զմեռ-
եալդ իմ յերեսաց իմոց , ունկն դիք ինձ ,
եւ խօսեցարուք վասն իմ ընդ Եփրոնի
9 որդւոյ Սահառայ , Եւ տացէ ինձ [5]զայրն
կրկին", որ է ի վիճակի ագարակին իւ-
րոյ , արծաթոյ՝ որչափ եւ արժան իցէ .
տացէ զնա ինձ ի միջի ձերում ի ստա-
10 ցուած [6]ընակաց ։ Եւ Եփրոն նստէր ի մէջ
որդւոցն Քետայ ։ Պատասխանի ետ Եփ-
րոն Քետացի Աբրահամու եւ ասէ լու ի
լու որդւոցն Քետայ եւ ամենեցուն որ
մտանէին ընդ դուռն քաղաքին նորա .
11 Եւ ասէ , Ցխս դարձ , Տէր , եւ ունկն դիր
ինձ . զագարակն ետու քեզ , եւ զայրն
որ ի նմա՝ տամ քեզ . առաջի ամենայն
քաղաքակցաց իմոց ետու քեզ . թաղեա
12 զմեռեալն քո ։ Եւ երկիր եպագ Աբրա-
13 համ առաջի ժողովրդեան երկրին . Եւ
խօսեցաւ ընդ Եփրոնի յականջս ժողո-
վրդեան երկրին եւ ասէ , Որովհետեւ
անսացեր ինձ , ունկն դիր ինձ . տաց քեզ
արծաթ ընդ ագարակին , առ յինէն եւ
14 թաղեցից անդ զմեռեալս ։ Պատասխանի
ետ Եփրոն Աբրահամու եւ ասէ ցնա,
15 [7]Ոչ տէր իմ . լուայ թէ" վէմինն չորեք-
հարիւր սատերի արծաթոյ է . ընդ իս եւ
ընդ քեզ զինչ է այն . բայց դու թաղ-
16 եա զմեռեալն քո ։ Եւ իբրեւ լուաւ Աբ-
րահամ յԵփրոնէ , կշռեաց զարծաթն Եփ-
րոնի , զոր խօսեցաւ յականջս որդւոցն
Քետայ , չորեքհարիւր սատեր արծաթոյ
17 ընտրոյ վաճառականաց ։ Եւ հաստատե-
ցաւ ագարակն Եփրոնի , որ է [8]առ կրկնով
այրիւն" յանդիման Մամբրէի , ագարակն
եւ այրն որ է ի նմա , եւ ամենայն ծա-
ռատունկ որ էր յագարակի անդ շուրջ
18 յամենայն սահմանս նորա , Ի ստացուածս
Աբրահամու առաջի որդւոցն Քետայ , որ
մտանէին ընդ դուռն քաղաքին նորա ։
19 Եւ յետ այնորիկ թաղեաց Աբրահամ զՍա-
ռա զկին իւր [9]ի կրկնում այրի ագարա-
կին , որ է" յանդիման Մամբրէի , այն է
20 Քեբրոն՝ յերկրին Քանանացւոց ։ Եւ հաս-
տատեցաւ ագարակն եւ այրն որ է ի նմա՝
Աբրահամու , ի ստացուածս շիրմաց յորդ-
ւոցն Քետայ ։

### Գլ. ԻԴ

1 Եւ Աբրահամ էր ծերացեալ եւ անցեալ
զաւուրբք . եւ Տէր օրհնեաց զԱբրահամ
2 ամենայնիւ ։ Եւ ասէ Աբրահամ ցծա-
ռայն իւր ցերէց տան իւրոյ , ցիշխան
ամենայն ընչից նորա , Դիր զձեռն քո
3 ընդ երանօք իմովք , Եւ երդմնեցուցից
զքեզ ի Տէր , յԱստուած երկնից եւ յԱս-
տուած երկրի , զի մի՛ առցես կին որդ-
ւոյ իմում Իսահակայ ի դստերաց Քա-
4 նանացւոց յորոց միջի ես բնակեմ . Այլ
յերկիրն [10]իմ ուստի եղեալ եմ երթիցես
եւ ի տուն իմ", եւ առցես դու անտի
5 կին որդւոյ իմում Իսահակայ ։ Ասէ ցնա
ծառայն , Գուցէ կինն ոչ կամիցի գալ
ընդ իս յերկիրս յայս , դարձուցանելով
դարձուցի՞ց զորդի քո յերկիրն ուստի ե-
6 լեր ։ Եւ ասէ Աբրահամ , Զգոյշ լեր , մի՛
7 դարձուցանիցես զորդի իմ անդր ։ Տէր
Աստուած երկնից [2]եւ Աստուած երկրի",
որ առ զիս ի տանէ հօր իմոյ եւ յերկրէն
ուստի ծնեալ էի , որ խօսեցաւ ընդ իս

[1] Եբր. ամ. ամք կենաց Սառայի [2] Յեբր. [illegible]
[3] Եբրայեցին յաւելու, յերեսաց իմոց [4] Եբր. իշխան
[5] Եբր. զայրն Մաքփեղայ [6] Եբր. չիրմի

[7] Եբր. Տէր իմ, ունկն դիր ինձ. [8] Եբր. ի Մաք-
փեղա [9] Եբր. յայրին որ յագարակին Մաքփե-
ղայ [10] Եբր. իմ, և առ ազգականս իմ երթիցես

եւ երդուաւ ինձ եւ ասէ , Զաւակի քում
տաց զերկիրդ զայդ, նա առաքեսցէ զհրեշ-
տակ իւր առաջի քո , եւ առցես անտի
8 կին որդւոյ իմում Իսահակայ ։ Ապա թէ
ոչ կամիցի կինն գալ ընդ քեզ [1]յերկիրս
յայս", քաւեալ լիցիս դու յերդմանէդ
յայդմանէ . բայց միայն զորդեակ իմ մի՛
9 դարձուցանիցես անդր ։ Եւ եդ ծառայն
Աբրահամու զձեռն իւր ընդ երանօք
տեառն իւրոյ , եւ երդուաւ նմա վասն
բանիս այսորիկ ։
10 Եւ առ ծառայն տասն ուղտ յուղտուց
տեառն իւրոյ եւ գնաց , եւ յամենայն
բարութեանց տեառն իւրոյ ընդ իւր . եւ
յարեաւ գնաց ի Միջագետս ի քաղաքն
11 Նաքովրայ ։ Եւ նստոյց զուղտսն արտա-
քոյ քաղաքին առ ջրհորոյ ջրոյն ընդ ե-
12 րեկս, յորժամ ջրուորն ելանէր ։ Եւ ասէ,
Տէր , Աստուած տեառն իմոյ Աբրահա-
մու , յաջողեա առաջի իմ այսօր , եւ ա-
րա ողորմութիւն ընդ տեառն իմում Աբ-
13 րահամու ։ Ահաւասիկ ես կամ ի վերայ
աղբեր ջրոյս , եւ դստերք բնակչաց քա-
14 ղաքիս ելանեն հանել ջուր ։ Եւ եղիցի
կոյս մի որում ես ասացից , թէ Խոնար-
հեցո զսափորդ քո զի արբից , եւ ասաս-
ցէ ցիս , Արբ , եւ ուղտուցդ քոց եւս
արբուցից մինչեւ դադարեսցեն յըմպե-
լոյ , զայն պատրաստեցեր ծառային քում
Իսահակայ , եւ այնու գիտացից թէ ա-
րարեր ողորմութիւն տեառն իմում [1]Աբ-
րահամու ։
15 Եւ եղեւ մինչչեւ կատարեալ էր նորա
զխօսն [1]ի մտի իւրում", եւ ահա Ռե-
բեկա ելանէր , որ ծնեալն էր Բաթուէլի
որդւոյ Մեղքայ կնոջ Նաքովրայ եղբօր
Աբրահամու, եւ ունէր սափոր յուս իւր ։
16 Եւ էր կոյսն գեղեցիկ երեսօք յոյժ , կոյս՝
զոր այր ոչ գիտէր . էջ յաղբեւրն եւ ե-
17 լից զսափորն իւր եւ ել ։ Ընթացաւ ծա-
ռայն ընդ առաջ նորա եւ ասէ , Արբո ինձ
18 սակաւ մի ջուր ի սափորոյ այտի ։ Եւ
նա ասէ , Արբ , տէր . եւ փութացաւ ի-
ջոյց զսափորն ի վերայ բազկաց իւրոց,
19 եւ արբոյց նմա, Մինչեւ դադարեաց յըմ-
պելոյ , եւ ասէ , Եւ ուղտուցդ քոց հա-
նից ջուր՝ մինչեւ ամենեքեան արբցեն ։
20 Եւ փութացաւ թափեաց զսափորն յա-
ւազանն , եւ ընթացաւ դարձեալ ի ջրը-
հորն հանել , եւ եհան ջուր ամենայն
21 ուղտուցն նորա ։ Եւ այրն միտ դնէր
նմա , եւ լուռ կայր ի միտ առնուլ , եթէ
աջողեա՞ց Տէր զճանապարհ նորա , եւ
22 թէ ոչ ։ Եւ եղեւ իբրեւ դադարեցին ա-
մենայն ուղտքն յըմպելոյ , եւ առ այրն
[2]գինդս ոսկիս՝ մի մի ըստ դահեկանի ծու-
լոյ", եւ երկուս ապարանջանս ի ձեռս
նորա ի տասն [3]դահեկանէ ծոյլ նոցա" ։
23 Եւ եհարց զնա եւ ասէ , Ո՞յր դուստր
ես դու, պատմեա ինձ . թէ իցէ՞ ի տան
24 [4]քում" մեզ տեղի իջավանաց ։ Եւ ասէ
ցնա , Դուստր Բաթուէլի եմ ես որդւոյ
25 Մեղքայ զոր ծնաւ Նաքովրայ ։ Եւ ասէ
ցնա , Եւ յարդ եւ խոտ շատ է մեր , եւ
26 տեղի իջավանաց ։ [5]Խոնարհեցաւ այրն եւ եր-
27 կիր եպագ [6]Աստուծոյ , Եւ ասէ , Օրհնեալ
Տէր Աստուած տեառն իմոյ Աբրահամու,
որ ոչ վրիպեցոյց զարդարութիւն իւր եւ
զճշմարտութիւն ի տեառնէ իմմէ , եւ ինձ
յաջողեաց Տէր ի տուն եղբօր տեառն ի-
28 մոյ ։ Եւ ընթացաւ աղջիկն պատմեաց
ի տան մօր իւրոյ ըստ բանիցն այնոցիկ։
29 Եւ Ռեբեկայ էր եղբայր որում անուն
էր Լաբան . եւ ընթացաւ Լաբան առ
30 այրն արտաքս յաղբեւրն . Իբրեւ ետես
զգինդսն եւ զապարանջանսն ի ձեռսն
քեռ իւրոյ , եւ զի լուաւ զբանսն յՌեբե-
կայ քեռէ իւրմէ որ ասէր , թէ Այսպէս
ինչ խօսեցաւ ընդ իս այրն. եւ եկն առ
այրն , մինչ կայր ի վերայ ուղտուց իւրոց
31 առ աղբերն . Եւ ասէ ցնա , Եկ մուտ
ի տուն , օրհնեալ Տեառն , զի՞ կաս ար-
տաքոյ . զի ես պատրաստեցի տուն եւ
32 տեղի ուղտուցդ ։ Եմուտ այրն ի տուն
անդր , եւ իջոյց ուղտուցն . եւ ետուն
յարդ եւ խոտ ուղտուցն , եւ ջուր լուա-
նալոյ ոտից նորա եւ ոտից նոցա որ ընդ
33 նմայն էին ։ Եւ եդին հաց առաջի նորա՝
ուտել . եւ նա ասէ , Ոչ կերայց մինչեւ
խօսեցայց զբանս իմ . եւ [7]ասեն Խօ-
34 սեաց ։ Եւ ասէ, Ծառայ Աբրահամու եմ
35 ես . Եւ Տէր օրհնեաց զտէր իմ յոյժ , եւ
բարձրացաւ . եւ ետ նմա արջառ եւ ոչ-
խար եւ արծաթ եւ ոսկի , ծառայս եւ
36 աղախնայս , ուղտս եւ էշս ։ Եւ ծնաւ
Սառա կին տեառն իմոյ որդի մի տեառն
իմում յետ ծերութեան իւրոյ , եւ նմա
37 ետ զամենայն ինչ որ էր նորա ։ Եւ
երդմնեցոյց զիս տէր իմ եւ ասէ , Ոչ

[1] Յեբր. [illegible]

[2] Եբր. գինդ ոսկի կիսոյ սիկղ ոսկւոյ [3] Եբր. սիկղէ [4] Եբր. Հօր քո [5] Եբր. Անկաւ [6] Եբր. Տեառն [7] Եբր. ասէ

այցես կին որդւոյ իմում [1]Իսահակայ
ի դստերաց աստի Քանանացւոց, յորոց
միջի ես պանդխտեալս եմ յերկրի սոցա.
38 Այլ ի տուն հօր իմոյ երթիցես եւ ի տոհմ
իմ, եւ առցես անտի կին որդւոյ իմում։
39 Եւ ես ասացի ցտէրն իմ, Գուցէ ոչ գայ-
40 ցէ կինն ընդ իս։ Եւ ասէ ցիս, Տէր [2]Աս-
տուած իմ որում հաճոյ եղէ" առաջի նո-
րա, նա առաքեսցէ զհրեշտակ իւր ընդ
քեզ, եւ յաջողեսցէ զճանապարհ քո, եւ
առցես կին որդւոյ իմում յազգէ իմմէ եւ
41 ի տանէ հօր իմոյ։ Եւ յայնժամ քաւեալ
լիցիս [3]ի նզովից աստի իմոց", յորժամ
երթիցես ի տոհմն իմ եւ ոչ տացեն,
քաւեալ լիցիս յերդմանէ աստի իմմէ։
42 Եւ եկի այսօր յաղբերն, ասեմ,
Տէր, Աստուած տեառն իմոյ Աբրահամու,
եթէ յաջողեսցես ինձ զճանապարհս իմ
43 զոր ես այժմիկ եկեալ եմ, Ահաւասիկ
ես հասեալ կամ ի վերայ աղբեր ջրոյ,
[1]եւ դստերք մարդկան քաղաքիս ելանեն
հանել ջուր." եւ եղիցի կոյս զոր ես ա-
սացից՝ Թէ Արբո ինձ սակաւ մի ջուր
44 ի սափորոյդ քումմէ, Եւ ասասցէ ցիս Թէ՝
Արբ եւ ուղտուցդ եւս քոց հանից ջուր,
այն է կին զոր պատրաստեաց Տէր [4]ծա-
ռայի իւրում Իսահակայ. եւ այնու գի-
տացից թէ արարեր ողորմութիւն ընդ
45 տեառն իմում Աբրահամու"։ Եւ եղեւ
մինչչեւ իմ կատարեալ էր զխօսս ի մտի
իմում, անդէն վաղվաղակի ելանէր Ռե-
բեկա, եւ ունէր սափոր յուս իւր. էջ
յաղբերն եւ եհան ջուր. եւ ասեմ ցնա,
46 Արբո ինձ։ Եւ փութացեալ իջոյց զսա-
փորն յինքենէ եւ ասէ, Արբ դու, եւ
ուղտուցդ եւս քոց արբուցից. եւ արբի,
47 եւ ուղտուցն իմոց արբոյց։ Եւ հարցի
ցնա եւ ասեմ, Ո՞յր դուստր ես դու,
[1]պատմեա ինձ." եւ նա ասէ, Դուստր Բա-
թուելի եմ ես, որդւոյ Նաքովրայ զոր
ծնաւ նմա Մեղքա. եւ եդի [5]զինդս յա-
կանջս" նորա, եւ ապարանջանս ի ձեռս
48 նորա։ Եւ [6]խնդացի, եւ երկիր պագի
Տեառն, եւ օրհնեցի զՏէր Աստուած
տեառն իմոյ Աբրահամու, որ յաջողեաց
ինձ ի ճանապարհի աստ ճշմարտութեան,
առնուլ զդուստր եղբօր տեառն իմոյ որդ-
49 ւոյ նորա։ Արդ եթէ առնէք դուք շնորհս

[1]Եբր. պոյոոե [2]Եբր. որոյ գնացի [3]Եբր. յերդմանէ աստի իմմէ [4]Եբր. որդւոյ տեառն իմոյ [5]Եբր. օղ ի քիթ [6]Եբր. անկայ

եւ արդարութիւն առ տէրն իմ, պատմե-
ցէք ինձ. ապա թէ ոչ, ցուցէք ինձ զի
50 դարձայց յաջ կամ յահեակ։ Պատասխա-
նի ետուն Լաբան եւ Բաթուէլ եւ ա-
սեն, Ի Տեառնէ ել իրդ այդ. եւ մեք ոչ
կարեմք [7]հակառակ ինչ չար ասել բար-
51 ւոյ"։ Ահաւադիկ Ռեբեկա առաջի քո,
առ եւ գնա. եւ եղիցի կին որդւոյ տեառն
52 քո՝ որպէս եւ խօսեցաւ Տէր։ Եւ եղեւ
իբրեւ լուաւ ծառայն Աբրահամու զբանս
53 նոցա, երկիր եպագ Տեառն։ Եւ եհան
ծառայն անօթս ոսկւոյ եւ անօթս ար-
ծաթոյ եւ հանդերձս, եւ ետ Ռեբեկայ.
եւ ետ ընծայս [8]եղբարց նորա եւ մօրն։
54 Կերան եւ արբին նա եւ արքն որ ընդ
նմա էին, եւ ննջեցին. եւ յարուցեալ ի
վաղորդայն անդր ասէ, Արձակեցէք զիս
55 [1]զի երթայց" առ տէր իմ։ Եւ ասեն [9]եղ-
բարքն նորա եւ մայրն, Կացցէ կոյսն առ
մեզ իբրեւ աւուրս տասն, եւ ապա եր-
56 թիցէ։ Եւ նա ասէ ցնոսա, Մի՛ խափա-
նէք զիս, զի Տէր աջողեաց զճանա-
պարհս իմ. արձակեցէք զիս զի երթայց
57 առ տէրն իմ։ Եւ ասեն [1]եղբարք նորա",
Կոչեսցուք զաղջիկն եւ հարցցուք ի բե-
58 րանոյ նորա։ Կոչեցին զՌեբեկա եւ ա-
սեն ցնա, Երթա՞ս ընդ առնս ընդ այս-
59 միկ. եւ նա ասէ, Երթամ։ Եւ յուղար-
կեցին զՌեբեկա զքոյրն իւրեանց եւ
[10]զինչս նորա, եւ զծառայն Աբրահամու
60 եւ որ ընդ նմայն էին։ Եւ օրհնեցին
զՌեբեկա եւ ասեն ցնա, Քոյր մեր ես.
եղիցես ի հազարս եւ ի բեւրս, եւ ժա-
ռանգեսցէ զաւակ քո զքաղաքս թշնա-
61 մեաց [11]քոց։ Յարուցեալ Ռեբեկա եւ
նաժիշտք իւր՝ ելին յուղտսն եւ գնացին
ընդ առնն. եւ առեալ ծառային զՌեբե-
կա՝ գնաց։
62 Եւ Իսահակ [12]յանապատի անդ առ
Ջրհորովն տեսլեանն" բնակէր յերկրին
63 ի կողմն հարաւոյ։ Եւ ել Իսահակ [13]զբօ-
սանել ի դաշտին ընդ երեկս. ամբարձ
զաչս իւր եւ ետես զի գային ուղտք
64 [1]տասն։ Ամբարձեալ զաչս իւր եւ Ռե-
բեկա ետես զԻսահակ, էջ վաղվաղակի
65 յուղտուէ անտի. Եւ ասէ ցծառայն, Ո՞վ
է այրն որ գայ ի դաշտին ընդ առաջ
մեր. եւ ասէ ծառայն, Նա է տէրն իմ.

[7]Եբր. ասել քեզ չար ինչ կամ բարի [8]Եբր. եղբօր [9]Եբր. եղբայր [10]Եբր. զդայեակ (Տե՛ս Գլ. ԼԵ.8) [11]Եբր. իւրոց [12]Եբր. դարձեալ գայր ի Ջրհորոյն Լահայրոյի. զի [13]Կամ, խոկալ

եւ նորա առեալ զձորձն արկաւ զիւրեւ։
66 Եւ պատմեաց ծառայն Իսահակայ զա-
67 մենայն զիրսն զոր արար։ Եւ [1]եմուտ
Իսահակ ի տուն Սառայի մօր իւրոյ, եւ
առ զՌեբեկա եւ եղեւ նորա կին. եւ
սիրեաց զնա, եւ մխիթարեցաւ Իսահակ
վասն [2]Սառայի մօր իւրոյ։

ԳԼ. ԻԵ

1 Եւ յաւել Աբրահամ առնուլ կին որում
2 անուն էր Քետուրա։ Եւ ծնաւ նմա
զԶեմրան եւ զՅեկսան եւ զՄադան եւ
զՄադիամ եւ զՅեսբոկ եւ զՍովւէ։
3 Եւ Յեկսան ծնաւ զՍաբա [2]եւ զԹեման"
եւ զԴադան. եւ եղեն որդիք Դադա-
նայ՝ [2]Ռագուէլ եւ Նաբդեէլ եւ" Ասու-
4 րիիմ եւ Լատուսիիմ եւ Լովովմիմ։ Եւ
որդիք Մադիամու՝ Գեփար եւ Ափեր եւ
Ենովք եւ Աբիդա եւ Եղրագա. ամենե-
քեան սոքա էին որդիք Քետուրայ։
5 Եւ ետ Աբրահամ զամենայն ինչս իւր
6 Իսահակայ [2]որդւոյ իւրում". Եւ որդւոց
հարճիցն իւրոց որ էին Աբրահամու՝ ետ
Աբրահամ պարգեւս, եւ արձակեաց
զնոսա յԻսահակայ որդւոյ իւրոյ, մինչ-
դեռ ինքն կենդանի էր, ընդ արեւելս՝
յերկիրն արեւելից։
7 Եւ այս են ամք աւուրց կենացն Աբ-
րահամու զորս եկեաց, հարիւր եւթա-
8 նասուն եւ հինգ ամ։ Եւ պակասեալ Աբ-
րահամու մեռաւ ի բարւոք ծերութեան,
ալեւորեալ եւ լի աւուրբք. եւ յաւելաւ
9 առ ժողովուրդ իւր։ Եւ թաղեցին զնա
Իսահակ եւ Իսմայէլ որդիք նորա՝ յայրի
անդ [3]ի կրկնում յագարակին Եփրոնի
որդւոյ Սահառայ Քետացւոյ, որ է յան-
10 դիման Մամբրէի. Ագարակն եւ այրն զոր
ստացաւ Աբրահամ յորդւոցն Քետայ.
անդ թաղեցին զԱբրահամ եւ զՍառա
կին նորա։
11 Եւ եղեւ յետ մահուանն Աբրահամու
օրհնեաց Աստուած զԻսահակ զորդի նո-
րա. եւ բնակեցաւ Իսահակ առ Ջրհորի
տեսլեանն։
12 Եւ այս են ծնունդք Իսմայելի որդւոյ
Աբրահամու, զոր ծնաւ Ագար Եգիպտա-
13 ցի Աբրահամու, աղախինն Սառայի։ Եւ
այս են անուանք որդւոցն Իսմայելի ըստ
անուանց ազգացն նորա. անդրանիկ Իս-
մայելի՝ Նաբեովթ եւ Կեդար եւ Աբդեէլ
14 եւ Մաբսամ, Եւ Մասմա եւ Իդումա եւ
15 Մասէ, Եւ Քոդդադ եւ Թեմա եւ Յետուր
16 եւ Նափէս եւ Կեդմա։ Սոքա են որդիք
Իսմայելի, եւ այս անուանք են նոցա
ի հանգրուանս իւրեանց եւ ի բանակս իւ-
րեանց, երկոտասան իշխանք նոցա ըստ
17 ազգաց իւրեանց։ Եւ այս են ամք կե-
նաց Իսմայելի, հարիւր երեսուն եւ եւթն
ամ. եւ պակասեալ մեռաւ, եւ յաւելաւ
18 յազգ իւր։ Եւ բնակեցաւ յԵւիլայ մին-
չեւ ցՍուր որ է յանդիման Եգիպտոսի,
մինչեւ ի գալ յԱսորեստանեայս. յանդի-
ման ամենայն եղբարց իւրոց բնակեցաւ։
19 Եւ այս են ծնունդք Իսահակայ որդւոյ
Աբրահամու. Աբրահամ ծնաւ զԻսահակ։
20 Եւ էր Իսահակ ամաց քառասնից յորժամ
առ զՌեբեկա զդուստր Բաթուելի Ասոր-
ւոյ, որ էր ի Միջագետաց Ասորւոց, զքոյր
21 Լաբանու Ասորւոյ իւր ի կնութեան։ Եւ
աղաչէր Իսահակ զՏէր վասն Ռեբեկայ
կնոջ իւրոյ զի ամուլ էր. Եւ լուաւ նմա
[4]Աստուած, եւ յղացաւ Ռեբեկա կին նո-
22 րա։ Եւ խաղային մանկունքն ի նմա.
եւ ասէ, Եթէ այսպէս լինիցի ինձ, ընդ-
է՞ր իցէ ինձ այս. եւ գնաց հարցանել
23 ի Տեառնէ։ Եւ ասէ ցնա Տէր, Երկու
ազգ են յարգանդի քում, եւ երկու ժո-
ղովուրդք յորովայնէ քումմէ զատցին.
եւ ժողովուրդ զժողովրդեամբ ելեւել ա-
նիցէ, եւ երէցն կրտսերոյն ծառայեսցէ։
24 Եւ իբրեւ լցան նորա աւուրք ծննդեան,
եւ էին երկու որդիք յորովայնի նորա։
25 Եւ եկն ել որդին անդրանիկ չառագոյն
ամենեւին՝ իբրեւ զմորթ թաւ, եւ ան-
ուանեաց զանուն նորա [5]Եսաւ. եւ ապա
ել եղբայր նորա, եւ ձեռն նորա ունէր
զգարշապարէ Եսաւայ. եւ կոչեաց զա-
26 նուն նորա [6]Յակոբ։ Եւ Իսահակ էր ա-
մաց վաթսնից, յորժամ ծնաւ զնոսա
27 Ռեբեկա։ Եւ աճեցին մանկունքն. եւ
էր Եսաւ այր հմուտ որսոյ՝ վայրագ, եւ
Յակոբ՝ այր [7]առանց պաճուճանաց" ըն-
28 տանուն։ Եւ սիրեաց Իսահակ զԵսաւ,
զի որս նորա կերակուր էր նմա. եւ
Ռեբեկա սիրէր զՅակոբ։
29 Եւ էր եփեալ Յակոբայ թան. եւ եկն
30 Եսաւ ի դաշտէ նքթեալ. Եւ ասէ Եսաւ

[1] Եբր. եմուծ զնա [2]Յ Եբր. պակասէ [3] Եբր. Մաք-փեղայ

[4] Եբր. Տէր [5] Այսինքն, թաւ [6] Այսինքն, որ ունի զգարշապարէ, կամ, խաբող [7] Եբր. հան-դարտ, կամ, լաւ

ցՅակոբ , Տուր ինձ ճաշակել ի չիկա-
թանէդ յայդմանէ , զի նքթեալ եմ . վասն
այնորիկ կոչեցաւ անուն նորա [1]Եդովմ ։
31 Եւ ասէ Յակոբ ցԵսաւ , Վաճառեա ինձ
32 այսօր [2]զանդրանկութիւնս քո ։ Եւ ասէ
Եսաւ , Ահաւասիկ ես երթամ ի վախճա-
նել , եւ առ իմէ՞ լիցին ինձ այն [3]անդ-
33 րանկութիւնք ։ Եւ ասէ ցնա Յակոբ, Եր-
դուիր ինձ այսօր . եւ երդուաւ նմա , եւ
վաճառեաց Եսաւ [2]զանդրանկութիւնսն իւր
34 Յակոբայ ։ Եւ Յակոբ ետ Եսաւայ հաց
եւ թան ոսպնեայ . կերաւ եւ արբ , եւ
յարեաւ գնաց . եւ անարգեաց Եսաւ
[4]զանդրանկութիւնն ։

## ԳԼ . ԻԶ

1 Եւ եղեւ սով յերկրին , թող զառա-
ջին սովն որ եղեւ ի ժամանակս Աբրա-
համու . եւ չոգաւ Իսահակ առ Աբիմե-
2 լեք արքայ Փղշտացւոց ի Գերարա ։ Եւ
երեւեցաւ նմա Տէր եւ ասէ, Մի իջաներ
յԵգիպտոս , այլ բնակեա դու յերկրիդ
3 յորում ասացից քեզ . Պանդխտեաց յերկ-
րիս յայսմիկ , եւ եղէց ընդ քեզ եւ օրհ-
նեցից զքեզ . զի քեզ եւ զաւակի քում
տաց զամենայն զերկիրս զայս , եւ հաս-
տատեցից զերդումն իմ զոր երդուայ
4 Աբրահամու հօր քում ։ Եւ բազմացու-
ցից զզաւակ քո իբրեւ զաստեղս երկ-
նից , եւ տաց զաւակի քում զամենայն
զերկիրս զայս , եւ օրհնեսցին ի զաւակի
5 քում ամենայն ազգք երկրի . Փոխանակ
զի լուաւ Աբրահամ հայր քո ձայնի ի-
մում , եւ պահեաց զհրամանս իմ եւ
զպատուիրանս իմ եւ զիրաւունս իմ եւ
զօրէնս իմ ։
6 Եւ բնակեցաւ Իսահակ ի մէջ Գերա-
7 րացւոց ։ Եւ հարցին արք տեղւոյն զՌե-
բեկայ կնոջէ նորա . եւ ասէ , Քոյր իմ
է . քանզի երկեաւ ասել թէ կին իմ է ,
թէ գուցէ սպանանիցեն զնա արք տեղ-
ւոյն վասն Ռեբեկայ , զի գեղեցիկ էր
8 երեսօք ։ Եւ եղեւ անդ բազում ժամա-
նակս . եւ կարկառեալ Աբիմելէք արքայ
Փղշտացւոց ընդ պատուհան , եւ ետես
զԻսահակ զի խաղայր ընդ Ռեբեկայ կնոջ
9 իւրում ։ Կոչեաց Աբիմելէք զԻսահակ եւ
ասէ ցնա , Ապաքէն կին քո էր , եւ ընդ-
է՞ր ասացեր թէ Քոյր իմ է . ասէ ցնա

[1] Այսինքն , շէկ [2]Եբր. զանդրանկութիւն. [3]Եբր. անդրանկութիւն [4]Եբր. զանդրանկութիւնն

Իսահակ , Քանզի ասացի թէ Գուցէ մե-
10 ռանիցիմ վասն նորա ։ Ասէ ցնա Աբիմե-
լէք , Ընդէ՞ր արարեր զայդ ընդ մեզ .
սակաւիկ մեւս ևս եւ ննջեալ էր ուրումն
յազգէ իմմէ առ կին քո , եւ ածէիր ի վե-
11 րայ մեր [5]անգիտութիւն ։ Եւ պատուի-
րեաց Աբիմելէք ամենայն ժողովրդեան
իւրում եւ ասէ , Ամենայն որ հարկա-
նիցի ընդ այրդ ընդ այդ կամ ընդ կին
դորա , մահու պարտական լիցի ։
12 Եւ սերմանեաց սերմն Իսահակ յերկ-
րին յայնմիկ , եւ եգիտ ի տարւոջն յայն-
միկ հարիւրաւոր [6]զգարին . եւ օրհնեաց
13 զնա Տէր ։ Եւ բարձրացաւ այրն , եւ եր-
թայր յառաջադէմ եւ մեծանայր , մինչեւ
14 եղեւ մեծ յոյժ ։ Եւ եղեւ նորա անաս-
ուն ոչխարի եւ արջառոյ , եւ [7]արմախք
բազում . եւ նախանձեցան ընդ նմա
15 Փղշտացիքն ։ Եւ զամենայն ջրհորս զոր
փորեցին ծառայք [8]նորա ի ժամանակն
Աբրահամու հօր նորա՝ խցին Փղշտացիքն
16 եւ լցին զնոսա հողով ։ Եւ ասէ Աբիմե-
լէք ցԻսահակ , Երթ դու ի մէնջ , զի
17 կարի զօրացար քան զմեզ եղեր ։ Եւ
գնաց անտի Իսահակ , եւ բնակեցաւ ի
ձորն Գերարացւոց , եւ անդ բնակեաց ։
18 Եւ դարձեալ Իսահակ փորեաց զջր-
հորսն ջրոյ , զոր փորեցին ծառայքն
Աբրահամու հօր նորա , եւ խցին զայն
Փղշտացիքն յետ մահուանն Աբրահամու
հօր նորա , եւ եդ նոյա անուանս ըստ
անուանցն զոր անուանեաց նոյա Աբ-
19 րահամ հայր իւր ։ Եւ փորեցին ծա-
ռայքն Իսահակայ ի ձորն Գերարացւոց ,
20 եւ գտին անդ ջրհոր ջրոյ կենդանւոյ։ Եւ
մարտնչէին հովիւքն Գերարացւոց ընդ
հովիւսն Իսահակայ , եւ ասէին թէ իւր-
եանց իցէ ջրհորն . եւ կոչեաց զանուն
ջրհորոյն Զրկումն . քանզի զրկէին զնա ։
21 [9]Չուեաց անտի եւ փորեաց՝՝ մեւս եւս
ջրհոր ջրոյ . հակառակէին եւ վասն այ-
նորիկ եւս . եւ կոչեաց զանուն նորա
22 Թշնամութիւն ։ Չուեաց անտի եւ փո-
րեաց այլ ջրհոր , եւ ոչ մարտնչէին վասն
այնր . եւ կոչեաց զանուն նորա Անդոր-
րութիւն , ասէ , Զի այժմ ընդարձակեաց
մեզ Տէր , եւ աճեցոյց զմեզ յերկրի ։
23 Ել անտի ի Ջրհորն երդման ։ (24) Եւ ե-
րեւեցաւ նմա Տէր ի գիշերին յայնմիկ

[5]Եբր. յանցանս [6]Եբր. պտուղ [7]Եբր. ծառայք [8]Եբր. հօր նորա [9]Եբր. Եւ փորեցին

եւ ասէ, Ես եմ Աստուած [1]հօր քո. մի՛
երկնչիր, զի ընդ քեզ եմ, եւ օրհնեցից
զքեզ եւ բազմացուցից զզաւակ քո վասն
25 Աբրահամու հօր քո։ Եւ շինեաց անդ
սեղան, եւ կարդաց զանուն Տեառն, եւ
եհար անդ զխորան իւր. փորեցին ծա-
ռայքն Իսահակայ անդ ջրհոր։
26 Եւ Աբիմելէք չոգաւ առ նա ի Գերա-
րայ, եւ Ոքոզաթ [2]տաճարապետ նորա
27 եւ Փիքող սպարապետ զօրաց նորա։ Եւ
ասէ ցնոսա Իսահակ, Զի՞ եկիք առ իս,
զի դուք ատեցէք զիս եւ հալածեցէք
28 ի ձէնջ։ Եւ ասեն, Տեսանելով տեսաք
զի էր Տէր ընդ քեզ, եւ ասեմք, Եղիցի
դաշն ընդ միմեանս, ընդ մեզ եւ ընդ
29 քեզ, եւ դիցուք ընդ քեզ ուխտ՝ Զառ-
նել ինչ մեզ չար, որպէս եւ մեք ոչինչ
մեղաք քեզ, եւ զոր օրինակ արարաք
քեզ բարի եւ արձակեցաք զքեզ խա-
ղաղութեամբ. եւ արդ դու օրհնեալ
30 ի Տեառնէ ես։ Եւ արար նոցա խրախու-
31 թիւն, կերան եւ արբին։ Եւ յարուցեալ
ի վաղիւ անդր երդուան այր ընկերի իւ-
րում. եւ արձակեաց զնոսա Իսահակ,
32 եւ գնացին ի նմանէ ողջութեամբ։ Եւ
եղեւ յաւուր յայնմիկ եկին ծառայքն Ի-
սահակայ եւ պատմեցին նմա վասն ջրհո-
րոյն զոր փորեցին, թէ Գտաք ջուր։
33 Եւ կոչեաց զնա Երդումն. վասն այնո-
րիկ է անուն քաղաքին այնմիկ Ջրհոր
երդման՝ մինչեւ ցայսօր ժամանակի։
34 Եւ էր Եսաւ ամաց քառասնից, եւ առ
իւր կին զՅուդիթ դուստր Բէերայ Քե-
տացւոյ, եւ զՄասեմաթ դուստր Ելոմ-
35 մայ Խեւացւոյ։ Եւ դառնացուցանէին
զԻսահակ եւ զՌեբեկա։

ԳԼ. ԻԷ

1 Եւ եղեւ իբրեւ ծերացաւ Իսահակ,
եւ վատեցին աչք նորա ի տեսանելոյ,
կոչեաց զԵսաւ զորդի իւր զերէց եւ ա-
սէ ցնա, Որդեակ իմ. եւ նա ասէ ցնա,
2 Ահաւասիկ եմ։ Եւ նա ասէ ցնա, Ահա-
ւասիկ ես ծերացեալ եմ, եւ ոչ գիտեմ
3 զօր վախճանի իմոյ. Արդ առ դու զգոր-
ծի քո՝ զաղեղն եւ զկապարճս, եւ ել
4 ի դաշտ եւ որսա ինձ որս. Եւ արա ինձ
խորտիկս որպէս եւ ես սիրեմ, եւ բեր
մատո ինձ զի կերայց, եւ օրհնեսցէ
զքեզ անձն իմ մինչչեւ մեռեալ իցեմ։
5 Եւ լուաւ Ռեբեկա զի խօսէր Իսահակ
ընդ որդւոյ իւրում. գնաց Եսաւ ի դաշտ
որսալ որս [3]հօր իւրում"։
6 Եւ խօսեցաւ Ռեբեկա ընդ Յակոբայ
որդւոյ իւրում եւ ասէ, Ահա լուայ ես
ի հօրէ քումմէ, զի խօսէր ընդ եղբօր
7 քում եւ ասէր, Բեր ինձ որս եւ արա
ինձ խորտիկս, զի կերայց եւ օրհնեցից
զքեզ առաջի Տեառն մինչչեւ մեռեալ
8 իցեմ։ Եւ արդ, որդեակ իմ, լուր ինձ,
9 որպէս ես պատուիրեմ քեզ. Գնա դու
ի խաշն, եւ առ ինձ անտի երկուս ուլս
փափուկս եւ ընտիրս, եւ արարից զնո-
սա խորտիկս հօր քում որպէս եւ սիրէ։
10 Եւ մատուսցես հօր քում եւ կերիցէ. զի
օրհնեսցէ զքեզ [4]հայր քո" մինչչեւ մե-
11 ռեալ իցէ։ Եւ ասէ Յակոբ ցՌեբեկա
մայր իւր, Եղբայր իմ Եսաւ՝ այր թաւ
12 է, եւ ես լերկ. Գուցէ շօշափիցէ զիս
հայր իմ, եւ լինիցիմ առաջի նորա իբ-
րեւ արհամարհոտ, եւ ածիցեմ ի վերայ
13 իմ անէծս եւ ոչ օրհնութիւն։ Եւ ասէ
ցնա մայրն իւր, Յիմ վերայ անէծքն այն,
որդեակ. բայց միայն լուր ձայնի իմում
14 եւ երթ ած ինձ։ Գնաց եւ առ ած մօր
իւրում. եւ [5]արար խորտիկս, որպէս եւ
15 սիրէր հայր նորա։ Եւ առեալ Ռեբեկայ
զպատմուճանն զազնիւ որդւոյ իւրոյ ե-
րիցու՝ որ կայր առ նմա ի տան, զգե-
ցոյց Յակոբայ որդւոյ իւրում կրտսերոյ։
16 Եւ զուլնիխն ագոյց ի բազուկս նորա,
եւ ի վերայ մերկոյ պարանոցի նորա։
17 Եւ ետ զխորտիկն եւ զհացն զոր արար
ի ձեռս Յակոբայ որդւոյ իւրոյ։
18 Եւ տարաւ հօր իւրում եւ ասէ, Հայր
իմ. եւ նա ասէ, Ահաւասիկ եմ. եւ ասէ,
19 Ո՞վ ես դու, որդեակ։ Եւ ասէ Յակոբ
ցհայրն, Ես եմ Եսաւ անդրանիկն քո.
արարի որպէս եւ խօսեցար ընդ իս. արի
նիստ եւ կեր յորսոյ իմմէ, զի օրհնեսցէ
20 զիս անձն քո։ Եւ ասէ Իսահակ ցորդին
իւր, Զի՞ է զի վաղվաղակի գտեր, որ-
դեակ. եւ նա ասէ, որպէս պատրաս-
21 տեաց Տէր [6]Աստուած առաջի իմ։ Եւ
ասէ Իսահակ ցՅակոբ, Մօտ եկ եւ շօ-
շափեցից զքեզ, որդեակ, եթէ դո՞ւ ի-
22 ցես որդի իմ Եսաւ, թէ ոչ։ Մատեաւ
Յակոբ առ Իսահակ հայր իւր, եւ շօշա-

[1]Եբր. Աբրահամու հօր [2]Եբր. բարեկամ

[3]Եբր. եւ բերել [4]Յեբր. պակասէ [5]Եբր. արար մայր նորա [6]Եբր. Աստուած քո

փեաց զնա եւ ասէ, Ձայնդ՝ ձայն Յա-
23 կոբայ, եւ ձեռքդ՝ ձեռք Եսաւայ։ Եւ ոչ
ծանեաւ զնա. զի էին ձեռք նորա իբ-
րեւ զձեռսն Եսաւայ եղբօր իւրոյ թաւ.
24 եւ օրհնեաց զնա, Եւ ասէ, Դո՞ւ ես որ-
25 դի իմ Եսաւ. եւ նա ասէ, Ես եմ։ Եւ
ասէ, Մատո ինձ եւ կերայց յորսոյ քում-
մէ, որդեակ, զի օրհնեսցէ զքեզ անձն
իմ. առ մատոյց նմա եւ կերաւ. եւ ե-
26 բեր նմա գինի, եւ արբ։ Եւ ասէ ցնա
Իսահակ հայր իւր, Մօտ եկ եւ համբու-
27 րեա զիս, որդեակ։ Եւ մատեաւ համ-
բուրեաց զնա. եւ առ զհոտ հանդերձից
նորա, եւ օրհնեաց զնա եւ ասէ, Ահա
հոտ որդւոյ իմոյ իբրեւ զհոտ անդոյ լիոյ
28 զոր օրհնեաց Տէր։ Եւ տացէ քեզ Աս-
տուած ի ցօղոյ երկնից եւ ի պարարտու-
թենէ երկրի, եւ բազմութիւն ցորենոյ
29 եւ գինւոյ. Եւ ծառայեսցեն քեզ ազգք,
եւ երկիր պագցեն քեզ իշխանք. եւ ե-
ղիցես տէր եղբօր քում, եւ երկիր պագ-
ցեն քեզ որդիք [1]հօր քո. որ անիծանի-
ցէ զքեզ՝ անիծեալ լիցի, եւ որ օրհնես-
ցէ զքեզ՝ օրհնեալ։
30 Եւ եղեւ յետ դադարելոյն Իսահակայ
յօրհնելոյ անտի զՅակոբ զորդի իւր, իբ-
րեւ ել Յակոբ յերեսաց Իսահակայ հօր
իւրոյ, եւ եկն Եսաւ եղբայր նորա յոր-
31 սոյ։ Արար եւ նա խորտիկս, եւ մատոյց
հօր իւրում, եւ ասէ ցհայր իւր, Յարի-
ցէ հայր իմ եւ կերիցէ յորսոյ որդւոյ իւ-
32 րոյ, զի օրհնեսցէ զիս անձն քո։ Եւ ա-
սէ ցնա Իսահակ հայր իւր, Ո՞վ ես դու.
Եւ նա ասէ, Ես եմ որդին քո անդրա-
33 նիկ Եսաւ։ Եւ [2]զարմացաւ Իսահակ զար-
մացումն" մեծ յոյժ, եւ ասէ, Իսկ այն
ո՞վ էր որ որսացաւ ինձ որս, եւ եբեր
մատոյց, եւ կերայ յամենայնէ մինչչեւ
քո եկեալ էր, եւ օրհնեցի զնա, եւ ե-
34 ղիցի օրհնեալ։ Եւ եղեւ իբրեւ լուաւ Ե-
սաւ զբանսն [3]Իսահակայ հօր իւրոյ, ա-
ղաղակեաց ի ձայն մեծ դառնացեալ յոյժ,
եւ ասէ ցհայրն իւր, Օրհնեա արդ եւ
35 զիս, հայր։ Եւ ասէ նա, Եկն եղբայր քո
նենգութեամբ եւ առ զօրհնութիւնս քո։
36 Եւ նա ասէ, Յիրաւի կոչեցաւ անուն
նորա Յակոբ, զի այս երկիցս խաբեաց
զիս. առ զանդրանկութիւնն իմ, եւ արդ
առ զօրհնութիւնս իմ։ Եւ ասէ Եսաւ
ցհայր իւր, Եւ ոչ մի՞ ինչ օրհնութիւն
37 թողեր ինձ, հայր։ Պատասխանի ետ Ի-
սահակ եւ ասէ ցԵսաւ, Որովհետեւ տէր
արարի զնա քեզ, եւ զամենայն եղբարս
նորա արարի նմա ծառայս, ցորենով եւ
գինւով հաստատեցի զնա, քեզ զի՞նչ ա-
38 րարից, որդեակ։ Ասէ Եսաւ ցհայրն իւր,
Միթէ մի՞ օրհնութիւն իցէ քո, հայր.
օրհնեա եւ զիս, հայր. եւ [3]իբրեւ ստրջա-
ցաւ Իսահակ," ամբարձ զձայն իւր Ե-
39 սաւ եւ ելաց։ Պատասխանի ետ Իսահակ
հայր նորա եւ ասէ ցնա, Ահա ի պա-
րարտութենէ երկրի եղիցի բնակութիւն
40 քո, եւ ի ցօղոյ երկնից ի վերուստ. Եւ
սրով քով կեցցես. եւ եղբօր քում ծա-
ռայեսցես. եւ եղիցի յորժամ քակես-
ցես, եւ լուծցես զլուծ նորա ի պարա-
նոյէ քումմէ։
41 Եւ պահէր Եսաւ ոխս Յակոբայ վասն
օրհնութեանն զոր օրհնեաց զնա հայր
իւր. եւ ասէր Եսաւ ի մտի իւրում,
Մերձեսցին աւուրք կարեաց հօր իմոյ,
42 զի սպանից զՅակոբ զեղբայր իմ։ Ազդ
եղեն Ռեբեկայ բանքն Եսաւայ որդւոյ
իւրոյ երիցու. եւ յղեաց կոչեաց զորդի
իւր զկրտսեր զՅակոբ եւ ասէ ցնա, Ա-
հա Եսաւ եղբայր քո սպառնայ սպանա-
43 նել զքեզ։ Արդ լուր, որդեակ, ձայնի
իմում, եւ արի գնա [3]ի Միջագետս" առ
44 Լաբան եղբայր իմ ի Խառան. Եւ բնա-
կեսցես ընդ նմա աւուրս [4]բազումս, մին-
չեւ անցցէ սրտմտութիւն բարկութեան
45 եղբօր [5]քո ի քէն, Եւ" մոռասցի զոր ինչ
արարեր նմա. եւ ապա առաքեցից կո-
չեցից զքեզ անտի. գուցէ անզաւակի-
ցիմ յերկոցունց ի ձէնջ ի միում աւուր։
46 Եւ ասէ Ռեբեկա ցԻսահակ, Ձանձ-
րացեալ է անձն իմ ի դստերաց որդւոց
Քետայ. եթէ առնուցու Յակոբ կին
ի դստերաց անտի Քետայ, ի դստերաց
երկրիս այսորիկ, ընդէ՞ր իցէ ինձ կեալ։

## ԳԼ. ԻԸ

1 Կոչեաց առ ինքն Իսահակ զՅակոբ,
օրհնեաց զնա եւ պատուիրեաց նմա եւ
ասէ, Մի՛ առնուցուս կին ի դստերաց
2 անտի Քանանացւոց։ Այլ արի գնա ի Մի-
ջագետս Ասորւոց, ի տուն Բաթուէլի հօր
մօր քո, եւ առ անտի քեզ կին ի դստե-
3 րաց Լաբանու եղբօր մօր քո։ Եւ Ա-

[1]Եբր. մօր [2]Եբր. երկեաւ Իսահակ երկիւղ
[3]Յ Եբր. [illegible]

[4]Եբր. ինչ [5]Եբր. քո. (45) Մինչեւ անցցէ սրտմտութիւն եղբօր քո ի քէն, և

տուած [1]իմ օրհնեսցէ զքեզ, եւ աճե-
ցուսցէ զքեզ եւ բազմացուսցէ զքեզ,
4 եւ եղիցես ի ժողովս ազգաց. Եւ տացէ
քեզ զօրհնութիւնն Աբրահամու [2]հօր ի-
մոյ", քեզ եւ զաւակի քում յետ քո,
ժառանգել քեզ զերկիր պանդխտութեան
5 քո՝ զոր ետ Աստուած Աբրահամու: Եւ
արձակեաց Իսահակ զՅակոբ, եւ գնաց
ի Միջագետս Ասորւոց առ Լաբան որդի
Բաթուելի Ասորւոյ, եղբայր Ռեբեկայ,
մօր Յակոբայ եւ Եսաւայ:
6 Եւ իբրեւ ետես Եսաւ եթէ օրհնեաց
Իսահակ զՅակոբ, եւ [3]գնաց ի Միջա-
գետս Ասորւոց առնուլ իւր անտի կին,
եւ յօրհնելն զնա պատուիրեաց եւ ասէ,
Մի՛ առնուցուս կին ի դստերաց աստի
7 Քանանացւոց, Եւ ունկնդիր եղեւ Յա-
կոբ հօր եւ մօր իւրում, եւ գնաց ի
8 Միջագետս Ասորւոց. Եւ ետես Եսաւ ե-
թէ չար թուին դստերք Քանանացւոցն
9 առաջի Իսահակայ հօր իւրոյ, Գնաց Ե-
սաւ առ Իսմայէլ, եւ առ զՄայելէթ
դուստր Իսմայելի որդւոյ Աբրահամու,
զքոյր Նաբէութայ, ի վերայ այլոց կա-
նանց իւրոց իւր կնութեան:
10 Եւ ել Յակոբ ի Ջրհորոյ անտի երդ-
11 ման, եւ գնաց ի Խառան. Եւ եհաս ի
տեղի մի եւ ննջեաց անդ, քանզի արեւն
ի մուտս էր. եւ առ ի քարանց տեղւոյն
եւ եդ ընդ սնարս իւր, եւ ննջեաց ի
12 տեղւոջն յայնմ: Եւ ետես տեսիլ. եւ ա-
հա սանդուղք հաստատեալ յերկրի, որոյ
գլուխ իւր հասանէր յերկինս, եւ հրեշ-
տակք Աստուծոյ ելանէին եւ իջանէին
13 ընդ նա: Եւ Տէր հաստատեալ կայր ի
նմա, եւ ասէ, Ես եմ Տէր, Աստուած
Աբրահամու հօր քո, եւ Աստուած Իսա-
հակայ. [2]մի՛ երկնչիր, զի" զերկիրդ յո-
րում դու ննջեսդ, քեզ տաց զդա եւ
14 զաւակի քում: Եւ եղիցի զաւակ քո իբ-
րեւ զաւազ երկրի, եւ ընդարձակեսցի
[4]ի ծովակողմն եւ ընդ արեւելս եւ ընդ
հիւսիս եւ ընդ հարաւ. եւ օրհնեսցին
ի քեզ ամենայն ազգք երկրի եւ ի զա-
15 ւակի քում: Եւ ես աւասիկ ընդ քեզ եմ
պահել զքեզ յամենայն ճանապարհս քո
յոր եւ գնասցես. եւ դարձուցից զքեզ
յերկիրս յայս. զի ոչ թողից զքեզ մին-
չեւ արարից զամենայն ինչ զոր խօսե-
16 ցայ ընդ քեզ: Եւ զարթեաւ Յակոբ ի
քնոյ անտի իւրմէ եւ ասէ, Տէր է ի
17 տեղւոջս յայսմիկ, եւ ես ոչ գիտէի: Զա-
հի հարաւ եւ ասէ, Ահեղ իմն է տեղիս
այս. եւ ոչ է աս եթէ ոչ տուն Աստու-
18 ծոյ, եւ այս է դուռն երկնից: Եւ յա-
րեաւ Յակոբ ընդ առաւօտն եւ առ
զվէմն զոր եդ ընդ սնարս իւր, եւ կանգ-
նեաց զնա արձան, եւ արկ եւղ ի գլուխ
19 նորա. Եւ կոչեաց Յակոբ զանուն տեղ-
ւոյն այնորիկ [5]Տուն Աստուծոյ". եւ յառաջ
անուն էր քաղաքին այնորիկ Լուզա:
20 Եւ ուխտեաց Յակոբ ուխտ եւ ասէ, Ե-
թէ եղիցի [2]Տէր Աստուած ընդ իս, եւ
ապրեցուսցէ զիս ի ճանապարհիս յայս-
միկ զոր ես երթամ, եւ տացէ ինձ հաց
21 ուտել եւ հանդերձ զգենուլ, Եւ դար-
ձուսցէ զիս ողջութեամբ ի տուն հօր
22 իմոյ, եւ եղիցի ինձ Տէր յԱստուած. Եւ
վէմս զոր կանգնեցի արձան՝ եղիցի [2]ինձ
Տուն Աստուծոյ. եւ յամենայնէ զոր տա-
ցես ինձ՝ տաց քեզ տասանորդս:

## Գլ. ԻԹ

1 Եւ զոտս իւր ամբարձեալ Յակոբայ
գնաց յերկիրն արեւելից, [2]առ Լաբան որ-
դի Բաթուելի Ասորւոյ, եղբայր Ռեբե-
2 կայ, մօր Յակոբայ եւ Եսաւայ" Եւ հա-
յեցաւ եւ ահա ջրհոր մի ի դաշտի անդ.
եւ էին անդ երեք հօտք խաշանց մա-
կաղեալք ի նմա, եւ ի ջրհորոյն յայն-
մանէ արբուցանէին զխաշինսն. եւ վէմ
մի մեծ կայր ի վերայ բերանոյ ջրհորոյն.
3 Եւ անդր ժողովէին ամենայն հօտք, եւ
թաւալէին զվէմն ի բերանոյ ջրհորոյն,
եւ տային ջուր խաշանցն, եւ կանխու-
ցանէին զվէմն ի բերան ջրհորոյն անդ-
4 րէն ի տեղի իւր: Եւ ասէ ցնոսա Յա-
կոբ, Եղբարք, ուստի՞ էք դուք. եւ նո-
5 քա ասեն, Ի Խառանէ եմք: Ասէ ցնոսա,
Գիտէ՞ք դուք զԼաբան զորդի Նաքովրայ.
6 Եւ նոքա ասեն, Գիտեմք: Ասէ ցնոսա,
Ո՞ղջ իցէ. եւ նոքա ասեն, Ողջ է. եւ
ահա Ռաքէլ դուստր նորա [6]գայր ընդ խա-
7 շինսն: Եւ ասէ Յակոբ, Դեռ աւուր շատ
կայ, չեւ եւս է ժամ խաշանցդ ժողո-
վելոյ. արբուցէք խաշանցդ, եւ երթայք
8 արածեցէք: Եւ նոքա ասեն, Ոչ հնար
թէ մինչ ոչ ժողովիցին ամենայն հովիւք,

---

[1] Եբր. Ամենակալ [2] Յեբր. պակասէ [3] Եբր. առաքեաց զնա [4] Կամ, ընդ արեւմուտս

[5] Եբր. Բեթէլ [6] Եբր. գայ

եւ տապալիցեն զվէմդ ի բերանոյ ջրհո-
րոյդ, եւ արբուցանիցեմք խաշանցս։
9 Մինչդեռ նա ընդ նոսա խօսէր, ահա
Ռաքէլ դուստր Լաբանու գայր ընդ խա-
շինս հօր իւրոյ. քանզի նա արածէր
10 զխաշինս հօր իւրոյ։ Եւ եղեւ իբրեւ ե-
տես Յակոբ զՌաքէլ դուստր Լաբանայ
եղբօր մօր իւրոյ, եւ զխաշինս Լաբա-
նայ եղբօր մօր իւրոյ, եւ մատուցեալ
Յակոբ տապալեցոյց զվէմն ի բերանոյ
ջրհորոյն, եւ արբոյց խաշանցն Լաբա-
11 նու եղբօր մօր իւրոյ։ Եւ համբուրեաց
Յակոբ զՌաքէլ, եւ ձայն եբարձ եւ ե-
12 լաց։ Եւ պատմեաց Յակոբ Ռաքելայ ե-
թէ եղբայր հօր նորա է, եւ որդի Ռե-
բեկայ. եւ ընթացեալ պատմեաց հօր իւ-
13 րում [1]ըստ բանիցս այսոցիկ"։ Եւ եղեւ
իբրեւ լուաւ Լաբան զանուն Յակոբայ
որդւոյ քեռ իւրոյ, ընթացաւ ընդ առաջ
նորա, գիրկս արկ եւ համբուրեաց զնա,
եւ տարաւ զնա ի տուն իւր. եւ պատ-
մեաց Լաբանու զամենայն զբանս զայ-
14 սոսիկ։ Եւ ասէ ցնա Լաբան, Յոսկերաց
իմոց եւ ի մարմնոց իմոց ես դու։ Եւ
էր ընդ նմա ամսօրեայ մի ժամանակ։
15 Եւ ասէ Լաբան ցՅակոբ, Զի եղբայր
իմ ես դու, [2]ոչ ծառայեսցես ինձ ձրի".
յայտ արա ինձ զինչ իցեն վարձք քո։
16 Եւ Լաբանայ էին երկու դստերք. ա-
նուն երիցուն Լիա, եւ անուն կրտսե-
17 րոյն Ռաքէլ։ Եւ աչք Լիայ տկարագոյնք,
բայց Ռաքէլ բարի էր տեսլեամբ եւ գե-
18 ղեցիկ երեսօք։ Եւ սիրեաց Յակոբ զՌա-
քէլ. եւ ասէ, Ծառայեցից քեզ եւթն
ամ վասն Ռաքելայ դստեր քո կրտսե-
19 րոյ։ Եւ ասէ ցնա Լաբան, Լաւ իցէ՝ քեզ
տալ զնա քան տալ զնա առն օտարի.
20 բնակեա դու ընդ իս։ Եւ ծառայեաց Յա-
կոբ վասն Ռաքելայ ամս եւթն. եւ էին
յաչս նորա իբրեւ աւուրք սակաւք, քան-
զի սիրէր զնա։
21 Եւ ասէ Յակոբ ցԼաբան, Տուր ինձ
զկին իմ, լցեալ են աւուրք, զի մտից
22 առ նա։ Եւ ժողովեաց Լաբան զամե-
նայն արս տեղւոյն, եւ արար հարսա-
23 նիս։ Եւ եղեւ երեկոյ, առեալ Լաբանու
զԼիա զդուստր իւր ածաւ առ Յակոբ,
24 եւ եմուտ առ նա Յակոբ։ Եւ ետ Լա-
բան զԶեղփա զաղախին իւր նաժիշտ
25 դստեր իւրում Լիայ։ Եւ իբրեւ այգ ե-
զեւ, եւ ահա Լիա էր. եւ ասէ Յակոբ
ցԼաբան, Զի՞նչ գործեցեր զայս. ո՞չ վասն
Ռաքելի ծառայեցի քեզ. ընդէ՞ր խաբե-
26 ցեր զիս։ Ասէ Լաբան, Չեն օրէնք յաշ-
խարհի մերում տալ նախ զկրտսերն քան
27 զերէց։ Արդ կատարեա [3]եւթն եւս ամ
ընդ նորա", եւ տաց քեզ եւ զնա փո-
խանակ վաստակոցն զոր վաստակեսցես
28 ինձ զեւթն ամ եւս այլ։ Արար այնպէս
Յակոբ, եւ կատարեաց [4]եւթն եւս ամ
ընդ նորա". եւ ետ նմա Լաբան զՌա-
29 քէլ դուստր իւր կնութեան։ Եւ ետ Լա-
բան Ռաքելի դստեր իւրում զԲալլա զա-
30 ղախին իւր նաժիշտ։ Եւ եմուտ առ Ռա-
քէլ, եւ սիրեաց զՌաքէլ քան զԼիա.
եւ ծառայեաց նմա այլ եւս եւթն ամ։
31 Իբրեւ ետես Տէր եթէ ատելի է Լիա,
եբաց զարգանդ նորա. բայց Ռաքէլ ա-
32 մուլ էր։ Եւ յղացաւ Լիա, եւ ծնաւ որդի
[1]Յակոբայ, եւ կոչեաց զանունն նորա [5]Ռու-
բէն. ասէ, Զի ետես Տէր զտառապանս
33 իմ, արդ սիրեսցէ զիս այր իմ։ Յղացաւ
դարձեալ [1]Լիա եւ ծնաւ երկրորդ որդի
[1]Յակոբայ, եւ ասէ, Զի լուաւ Տէր եթէ
ատեցեալ եմ, եւ յաւել ինձ զսա. եւ կո-
34 չեաց զանուն նորա [6]Շմաւոն։ Եւ յղա-
ցաւ եւ ծնաւ որդի, եւ ասէ, Արդ առ
իս եղիցի այր իմ, զի ծնայ նմա երիս
որդիս. վասն այսորիկ կոչեաց զանուն
35 նորա [7]Ղեւի։ Եւ յղացաւ դարձեալ,
ծնաւ որդի, եւ ասէ, Զայս միւսանգամ
գոհացայց զՏեառնէ. եւ կոչեաց զանուն
նորա [8]Յուդա. եւ եկաց ի ծննդոց։

ԳԼ. Լ

1 Իբրեւ ետես Ռաքէլ եթէ ոչ ծնաւ որ-
դի Յակոբայ, նախանձեցաւ Ռաքէլ
ընդ քեռն իւրում, եւ ասէ ցՅակոբ,
Տուր ինձ որդիս, ապա թէ ոչ՝ մեռա-
2 նիմ։ Բարկացաւ Յակոբ Ռաքելայ եւ
ասէ ցնա, Միթէ փոխանակ Աստուծո՞յ
իցեմ ես, որ արգել զպտուղ որովայնի
3 քո։ Եւ ասէ Ռաքէլ ցՅակոբ, Աւանիկ
աղախին իմ Բալլա. մուտ առ նա, եւ
ծնցի ի վերայ ծնկաց իմոց, եւ արարից
4 եւ ես որդիս ի նմանէ։ Եւ ետ նմա
զԲալլա զաղախին իւր կնութեան, ե-

[1]Յեբր. [illegible] [2]Եբր. միթէ ծառայեսցես ինձ ձրի՞

[3]Եբր. զեւթներորդն սորա [4]Եբր. զեւթնե-
րորդն նորա [5]Այսինքն, տես որդի [6]Այսին-
քն, լսել [7]Այսինքն, յարումն [8]Այսինքն,
գոհութիւն

5 մուտ առ նա Յակոբ։ Եւ յղացաւ Բալլա
[1]նաժիշտ Ռաքելայ", եւ ծնաւ որդի Յա-
6 կոբայ։ Եւ ասէ Ռաքէլ, Իրաւ արար ինձ
Աստուած, եւ լուաւ ձայնի իմում, եւ ետ
ինձ որդի. վասն այնորիկ կոչեաց զա-
7 նուն նորա [2]Դան։ Եւ յղացաւ դարձեալ
Բալլա նաժիշտն Ռաքելայ, եւ ծնաւ որ-
8 դի երկրորդ Յակոբայ։ Եւ ասէ Ռաքէլ,
Օգնեաց ինձ Աստուած, զի զուգամարեցայ
ընդ քեռ իմում եւ յաղթեցի. եւ կոչ-
եաց զանուն նորա [3]Նեփթաղիմ։
9 Իբրեւ ետես Լիա եթէ եկաց ի ծնըն-
դենէ, առ զԶելփա զնաժիշտ իւր եւ ետ
10 Յակոբայ կնութեան։ Յղացաւ Զելփա
նաժիշտն Լիայ, եւ ծնաւ որդի Յակո-
11 բայ։ Եւ ասէ Լիա, Առ իս բախտ իմ.
եւ անուանեաց զանուն նորա [4]Գադ։
12 Յղացաւ Զելփա նաժիշտն Լիայ, եւ
13 ծնաւ եւս որդի երկրորդ՝ Յակոբայ։ Եւ
ասէ Լիա, Երանելի եմ ես, զի երա-
նեսցեն զիս կանայք. եւ կոչեաց զանուն
նորա [5]Ասեր, [1]մեծութիւն։
14 Գնաց Ռուբէն յաւուրս հնձոց ցորե-
նոյ, եւ եգիտ խնձոր մանրագորայ յան-
դի, եւ եբեր զայն առ Լիա մայր իւր.
ասէ Ռաքէլ ցԼիա քոյր իւր, Տուր ինձ
15 ի մանրագորաց որդւոյ քո։ Եւ ասէ
Լիա, Ո՞չ իցէ քեզ չատ զի առեր զայրն
իմ, մինչ եւ զմանրագո՞րս որդւոյ իմոյ
առնուցուս. եւ ասէ Ռաքէլ, [6]Ոչ այդ-
պէս է" ննջեսցէ ընդ քեզ զայս գիշեր
16 փոխանակ մանրագորաց որդւոյ քո։ Եւ
իբրեւ եմուտ Յակոբ յանդէ ընդ երեկս,
ել Լիա ընդ առաջ նորա եւ ասէ, Առ
իս մտցես այսօր. քանզի ի վարձու կա-
լայ զքեզ փոխանակ մանրագորաց որդ-
ւոյ իմոյ. եւ ննջեաց ընդ նմա զայն գի-
17 շեր։ Եւ լուաւ Աստուած Լիայ. յղացաւ
18 եւ ծնաւ Յակոբայ որդի հինգերորդ։ Եւ
ասէ Լիա, Ետ ինձ Աստուած զվարձս
իմ, փոխանակ զի ետու զաղախինն իմ
առն իմում. եւ կոչեաց զանուն նորա
19 [7]Իսաքար, [1]որ է վարձ։" Եւ յղացաւ
միւսանգամ Լիա, եւ ծնաւ որդի վեցե-
20 րորդ՝ Յակոբայ։ Եւ ասէ Լիա, Պար-
գեւեաց ինձ Աստուած պարգեւ բարի.
յայսմ հետէ [8]սիրեսցէ զիս" այր իմ, զի
ծնայ նմա որդիս վեց. եւ կոչեաց զա-

[1]Յեբր. դոլոռէ [2]Այլօրինակն, դատաւոր [3]Այլօրինակն, գուպարած իմ [4]Այլօրինակն, բախտ [5]Այլօրինակն, երանելի [6]Եբր. Ապա [7]Այլօրինակն վարձ [8]Եբր. բնակեսցէ ընդ իս

21 նուն նորա [9]Զաբուղոն։ Եւ յետ այնո-
րիկ ծնաւ դուստր, եւ կոչեաց զանուն
նորա [10]Դինա։
22 Եւ յիշեաց Աստուած զՌաքէլ. եւ
լուաւ նմա Աստուած, եւ եբաց զար-
23 գանդ նորա. Եւ յղացաւ ծնաւ որդի [1]Յա-
կոբայ. եւ ասէ [1]Ռաքէլ, Եհան յինէն
24 Աստուած զնախատինս իմ։ Եւ կոչեաց
զանուն նորա [11]Յովսէփ. ասէ, Յաւել-
ցէ ինձ [12]Աստուած որդի միւս եւս։
25 Եւ եղեւ իբրեւ ծնաւ Ռաքէլ զՅով-
սէփ, ասէ Յակոբ ցԼաբան, Արձակեա
զիս զի երթայց ի տեղի իմ եւ յերկիր
26 իմ. Եւ տուր զկանայս եւ զմանկունս
իմ, վասն որոց ծառայեցի քեզ, զի
գնացից. զի դու ինքնին իսկ գիտես
զծառայութիւնն զոր ծառայեցի քեզ։
27 Ասէ ցնա Լաբան, Եթէ գտի շնորհս ա-
ռաջի քո, հմայեցի զի օրհնեաց զիս [12]Աս-
28 տուած յոտին քում։ Եւ ասէ Լաբան,
Յայտ արա զվարձս քո յինէն, եւ տաց։
29 Ասէ ցնա Յակոբ, Դու գիտես որչափ ինչ
ծառայեցի քեզ, եւ որչափ խաշն էր քո առ
30 իս. Սակաւիկ ինչ էր յառաջ քան զիս
եւ աճեաց ի բազմութիւն, եւ օրհնեաց
զքեզ Տէր [1]Աստուած յոտին իմում. եւ արդ
31 ես ե՞րբ առնիցեմ ինձ տուն։ Եւ ասէ ցնա
Լաբան, Զի՞նչ տաց քեզ։ Եւ ասէ ցնա
Յակոբ, Մի՛ ինչ տար ինձ, բայց զայս
եւեթ բանս արասցես ինձ. դարձեալ ա-
32 րածեցից զխաշինս քո եւ պահեցից. [13]Եւ
անցցեն այսօր ամենայն խաշինքդ առաջի
քո, եւ զատ ի միմեանց զամենայն ոչխար
զխայտախարիւ եւ զգորչ, եւ զամենայն
արօտական զհամակ յօղեաց. եւ ամենայն
խայտախարիւն յօղեաց եւ պիսակն յայ-
33 ծեաց եղիցին վարձք"։ Եւ երեւեսցի ար-
դարութիւն իմ ի վաղիւ օր թէ գոն իմ
վարձք առաջի քո. ամենայն որ ոչ իցէ
[14]խայտ եւ պիսակ յայծեաց, եւ գորչա-
խայտ յօղեաց", ի գողօնս համարեալ
34 լիցի ինձ։ Եւ ասէ ցնա Լաբան, Եղիցի
35 ըստ բանի քում։ Եւ զատոյց յաւուր

[9]Այլօրինակն, բնակութիւն [10]Այլօրինակն, դատաստան [11]Այլօրինակն, յաւելցէ [12]Եբր. Տէր [13]Եբր. Անցից այսօր ընդ ամենայն խաշինս քո, և զատուցից անտի զամենայն ոչխար պիսակ և խայտախարիւ, և յօղեաց զամենայն ոչխար սեաւ, և զխայտախարիւն և զպիսակ յայծեաց, և սոքա եղիցին վարձք իմ [14]Եբր. պիսակ և խայտախարիւ յայծեաց առ իս, և որ ոչ իցէ սեաւ յօղեաց

յանմիկ զքաղս [1]կապոյտս եւ զպիսակս,
եւ զամենայն այծս կապոյտս եւ զպի-
սակս, եւ զամենայն սպիտակս ի նոցանէ
եւ զամենայն համակս" յօդեաց, ետ ի
36 ձեռս որդւոցն իւրոց. Եւ մեկնեցոյց
ճանապարհ երից աւուրց ընդ մէջ նոցա
եւ ընդ մէջ Յակոբայ. եւ Յակոբ արա-
ծէր զխաշինսն Լաբանու զմնացեալս։
37 Եւ առ Յակոբ գաւազան՝ չեր ղողար
եւ ընկուզի եւ սօսւոյ, եւ կեղեւեաց
զնոսա Յակոբ, եւ եղեւ սպիտակ. եւ
եքերծ զգալարն ի գաւազանաց անտի,
եւ երեւէր ի գաւազանսն սպիտակն զոր
38 քերծոյր՝ նկարէն։ Եւ դնէր զգաւազանսն
զոր քերծոյր՝ յաւազանս ջրարբից ջրոյն.
զի իբրեւ գայցեն խաշինքն ըմպել ջուր,
հանդէպ գաւազանացն զկծիցին, յոր-
39 ժամ գայցեն ըմպել ջուր։ Եւ զկծէին
խաշինքն ի գաւազանսն, եւ ծնանէին
խաշինքն գորշախայտս եւ պիսակս եւ
40 խայտախարիւս։ Եւ զորոջսն ուրոյն զա-
տանէր Յակոբ, եւ [2]կացուցանէր յան-
դիմանս մաքեացն, եւ զխոյ կապոյտ եւ
զամենայն գորշախայտն յօդեաց". եւ
զատանէր իւր հօտս առանձինն, եւ ոչ
խառնէր զնոսա ի խաշինս Լաբանու։
41 Եւ լինէր յորժամ զկծէին խաշինքն [3]ի
խառնսն եւ յղեայլին", դնէր Յակոբ
զգաւազանսն յանդիման խաշանցն յա-
ւազանսն, առ ի զկծելոյ նոցա ըստ գա-
42 ւազանացն։ Եւ յորժամ [4]ծնանէին խա-
շինքն՝ ոչ դնէր. եւ լինէր [5]աննշանն
Լաբանու, եւ [6]նշանաւորն Յակոբայ։
43 Եւ մեծացաւ այրն յոյժ յոյժ, եւ եղեւ
նորա ոչխար եւ արջառ յոյժ, ծառայք
եւ աղախնայք, ուղտք եւ էշք։

## ԳԼ. ԼԱ

1 Եւ լուաւ [7]Յակոբ զբանս որդւոցն Լա-
բանու զի ասէին եթէ, Առ Յակոբ զա-
մենայն ինչս հօր մերոյ, եւ ի հօր մե-
րոյ ընչից արար իւր զայն ամենայն
2 փառս։ Եւ ետես Յակոբ զերեսս Լաբա-
նու, եւ ահա ոչ էին ընդ նմա որպէս
3 յերէկն եւ յեռանդ։ Եւ ասէ Տէր [7]Աս-
տուած ցՅակոբ, Դարձիր յերկիր հօր
քո եւ յազգ քո, եւ եղէց ընդ քեզ։
4 Եւ յղեաց Յակոբ եւ կոչեաց զՌաքէլ
եւ զԼիա ի դաշտ անդր ուր խաշինքն
5 էին, Եւ ասէ ցնոսա, Տեսանեմ ես զե-
րեսս հօր ձերոյ, զի ոչ են ընդ իս որ-
պէս յերէկն եւ յեռանդ. եւ Աստուած
6 հօր իմոյ էր ընդ իս։ Եւ դուք ինքնին
գիտէք զի յամենայն զօրութենէ իմմէ
7 ծառայեցի հօր ձերում. Եւ հայր ձեր ընդ-
հարաւ ընդ իս, եւ փոխեաց զվարձս իմ
[8]զտասն բծացդ", եւ ոչ ետ նմա Աս-
8 տուած առնել ինձ չար։ Եթէ [9]ասիցէ,
Նկարէնքդ" եղիցին քո վարձք, ամենայն
խաշինքս [10]նկարէնս ծնանիցին". եւ եթէ
[11]ասիցէ թէ Սպիտակքդ" եղիցին քո
վարձք, ամենայն խաշինքս [12]սպիտակս
9 ծնանիցին"։ Եւ եհան Աստուած [13]զամենայն
10 խաշինս" հօր ձերոյ եւ ետ ինձ։ Եւ լի-
նէր յորժամ զկծէին խաշինքն, տեսանէի
աչօք իմովք յերազի, եւ ահա քաղք եւ
խոյք [14]ելանէին ի վերայ մաքեաց եւ այ-
ծից, պիսակք եւ խայտախարիւք եւ գոր-
11 շախայտք։ Եւ ասէ ցիս հրեշտակ Աս-
տուծոյ ի տեսլեան, Յակոբ. եւ ես ա-
12 սեմ, Զի՞ է։ Եւ ասէ, Հայեաց աչօք
քովք, եւ տես զքաղսն եւ զխոյս որ ե-
լանեն ի մաքիսն եւ յայծս. զի՛արդ պի-
սակք եւ գորշախայտք եւ խայտախա-
րիւք են. քանզի տեսի որչափ ինչ առ-
13 նէր ընդ քեզ Լաբան։ Ես եմ [15]Աստուած
որ երեւեցայ քեզ ի տեղւոջն Աստու-
ծոյ", ուր օծեր ինձ զարձանն, եւ եդիր
[16]ուխտ. եւ արդ արի ել յերկրէս յայս-
մանէ, եւ երթ յերկիր ծննդեան քո,
եւ եղէց ընդ քեզ։
14 Պատասխանի ետուն Ռաքէլ եւ Լիա
եւ ասեն ցնա, Միթէ դո՞յ եւս մեր այ-
սուհետեւ բաժին եւ ժառանգութիւն ի
15 տան հօր մերոյ. Ո՞չ ապաքէն իբրեւ զօ-
տարոտիս համարեալ եմք նմա. զի վա-
ճառեաց զմեզ եւ եկեր ուտելով զար-
16 ծաթ մեր. Ամենայն մեծութիւն [7]եւ
փառք" զոր եհան Աստուած ի հօրէ մեր-
մէ, [17]մեզ եղիցի" եւ որդւոց մերոց. արդ
զոր ինչ ասաց քեզ Աստուած՝ արա։

---

[1] Եբր. գորշախայտս և խայտախարիւս, և զամենայն այծս պիսակս և խայտախարիւս, զամենայն յորում իցէ սպիտակ, և զամենայն սեաւ [2] Եբր. դարձուցանէր զերեսս խաշանցն առ գորշախայտսն և առ ամենայն սեաւս որ էին ի խաշինսն Լաբանու [3] Եբր. ուժեղք [4] Եբր. տկարանայլին [5] Եբր. տկարն [6] Եբր. ուժեղն [7] ՅԵբր. պոֆաոե

[8] Եբր. տասնիցս [9] Եբր. ասէր այսպէս, Պիսակքդ [10] պիսակս ծնանէին [11] Եբր. ասէր թէ Գորշախայտքդ [12] Եբր. գորշախայտս ծնանէին [13] Եբր. զխաշինս [14] Եբր. որ ելանէին [15] Եբր. Աստուած Բեթելայ [16] Եբր. ուխտ ընդ իս անդ [17] Եբր. մեր է

17 Յարեաւ Յակոբ, առ զկանայս իւր եւ
զմանկունս իւր, եւ եհան զնոսա յուղտս.
18 Եւ խաղացոյց զամենայն ինչս իւր եւ
զամենայն ստացուածս իւր զոր արար
ի Միջագետս Ասորւոց, երթալ առ Ի-
սահակ հայր իւր յերկիրն Քանանացւոց։
19 Եւ Լաբան երթեալ էր ի կտուրս խա-
շանց իւրոց. եւ գողացաւ Ռաքէլ զկուռս
20 հօր իւրոյ։ Եւ գողացաւ Յակոբ զմիտս
Լաբանու [1]անսերոյ իւրոյ" չպատմել նմա
21 թէ գնայցէ։ Եւ գնաց ինքն եւ ամենայն
որ ինչ իւր էր, եւ յարուցեալ անց ընդ
Գետ եւ զիմեաց ի լեառն Գաղաադու։
22 Ազդ եղեւ Լաբանու [2]Ասորւոյ յաւուրն
23 երրորդի, եթէ գնաց Յակոբ։ Եւ առեալ
զեղբարս իւր ընդ իւր, պնդեցաւ զկնի
նորա ճանապարհ զեւթն աւուր, եւ ե-
24 հաս նմա ի լերինն Գաղաադու։ Եւ եկն
Աստուած առ Լաբան Ասորի ի տեսլեան
զիշերոյ եւ ասէ ցնա, Զգոյշ լեր անձին
քում, գուցէ խօսիցիս ընդ Յակոբայ
25 [3]անզգամութեամբ։ Եւ Եհաս Լաբան
Յակոբայ. եւ Յակոբ եհար զխորան իւր
ի լերինն. եւ Լաբան կացոյց զեղբարս
իւր ի լերինն Գաղաադու։
26 Եւ ասէ Լաբան ցՅակոբ, Ընդէ՞ր ա-
րարեր զայդ, ընդէ՞ր գաղտագնաց եղեր
յինէն, [2]եւ գողացար զիս," եւ վարեցեր
27 զդստերս իմ իբրեւ զգերեալս սրոյ. [4]Եւ
եթէ ազդ արարեալ էր ինձ," առաքէի
զքեզ ուրախութեամբ եւ արուեստակա-
28 նօք թմբկաց եւ քնարաց։ Եւ [5]չէ՞ր արդեւք
արժանի" համբուրել զորդեակս իմ եւ
զդստերս իմ. եւ արդ անմտութեամբ ա-
29 րարեր։ Եւ այժմ ձեռնհաս էի առնել քեզ
չար, բայց Աստուած հօր քո երէկ ա-
սաց ցիս, ասէ, Զգոյշ լեր գուցէ խօսի-
ցիս ընդ Յակոբայ [3]անզգամութեամբ։
30 Եւ արդ գնացեալ երթաս, զի ցանկա-
նալով ցանկացեալ ես երթալ ի տուն հօր
քո. եւ ընդէ՞ր գողացար զաստուածսն
31 իմ։ Պատասխանի ետ Յակոբ եւ ասէ
ցԼաբան, Քանզի երկեայ. ասացի թէ
գուցէ հանիցես զդստերս քո յինէն. [2]եւ
32 զամենայն ինչ զիմ։ Եւ ասէ Յակոբ,"
Առ որում գտցես զաստուածսն քո, [6]մի՛
կեցցէ առաջի" եղբարցս մերոց. եւ արդ
ծանիր ինչ ի քոց ընչից առ իս, եւ առ-
ցես։ Եւ ոչ [2]ծանեաւ առ նմա եւ ոչ ինչ.
եւ ոչ" գիտէր Յակոբ թէ Ռաքելայ
33 [2]կնոջ իւրոյ" գողացեալ էր զնոսա։ Եւ
մտեալ Լաբան յուզէր [7]ի տան Յակոբայ,
եւ [7]ի տան Լիայ, եւ [7]ի տան երկոցուն
հարճիցն, եւ ոչ գտանէր. եւ ելեալ [8]ի
տանէ անտի Լիայ՝ եմուտ [9]ի տուն Ռա-
34 քելի։ Իսկ Ռաքելի առեալ զկուռսն եդ
ընդ ուղտու պատաստաւ, եւ նստաւ ի
վերայ նոցա. եւ յուզեաց Լաբան զամե-
35 նայն տաղաւարն եւ ոչ եգիտ։ Եւ նա
ասէ ցհայր իւր, Մի՛ ինչ ծանր թուես-
ցի քեզ, տէր, ոչ կարեմ յոտն յառնել
առաջի քո, քանզի ի կանանց օրէնս եմ։
Եւ յուզեաց [2]Լաբան զամենայն զտունն"
եւ ոչ եգիտ զկուռսն։
36 Բարկացաւ Յակոբ եւ կռուէր ընդ Լա-
բանու. պատասխանի ետ Յակոբ եւ ա-
սէ ցԼաբան, Զի՞նչ վնաս է իմ, կամ
զի՞նչ յանցանք են իմ, զի պնդեցար
37 զհետ իմ։ Եւ յուզեցեր զամենայն զինչս
իմ, զի՞նչ գտեր յամենայն ընչից [10]քոց
ի տան իմում", դիր առաջի եղբարցս
իմոց եւ եղբարց քոց, եւ յանդիմանես-
38 ցեն ի մէջ մեր երկոցունց։ Այս քսան
ամ է զի էի ընդ քեզ. ոչխարք քո եւ
այծիք ոչ [11]ստերջացան, եւ զխոյս մա-
39 քեաց քոց ոչ կերայ. Զգազանաբեկն ոչ
բերի առ քեզ, այլ ես յանձնէ տուժէի.
[12]զգողունի տուընջեան եւ զգողունի գի-
40 շերոյ։ Զցերեկ այրեալ լինէի ի տօթոյ,
եւ զցայգ ի ցրտոյ. հատեալ էր քուն
41 յաչաց իմոց։ Այս քսան ամ է ի տան
քում էի. զչորեքտասան ամ փոխանակ
դստերաց քոց վաստակեցի, եւ զվեց ամ
ի խաշինս քո, եւ [13]խաբեցեր զիս ի վարձս
42 տասն բժաւս"։ Եթէ ոչ Աստուած հօր
իմոյ, Աստուած Աբրահամու եւ Երկեւղն
Իսահակայ էր ընդ իս, այժմ թերեւս ու-
նայն իսկ արձակէիր զիս. այլ զտառա-
պանս իմ եւ զվաստակս ձեռաց իմոց եսես
Աստուած, եւ յանդիմանեաց զքեզ երէկ։
43 Պատասխանի ետ Լաբան եւ ասէ ցՅա-
կոբ, Դստերքդ՝ դստերք իմ են, եւ ուս-
տերքդ՝ ուստերք իմ են, եւ խաշինքդ՝
խաշինք իմ են. եւ ամենայն ինչ զոր

[1] Եբր. Ասորւոյ [2] Յեբր. Գաղաադ [3] Եբր. բա-
րի կամ չար [4] Եբր. Ընդէ՞ր թաքուցեր զփա-
խուստ քո, և գողացար զիս. և ոչ ազդ ա-
րարեր ինձ, և [5] Եբր. ոչ թողեր ինձ [6] Եբր.
մի՛ կեցցէ. որոնեա առաջի

[7] Եբր. ի խորանի [8] Եբր. ի խորանէ [9] Եբր. ի
խորան [10] Եբր. տան քո [11] Եբր. վիժեցին
[12] Եբր. ի ձեռանէ իմմէ պահանջէիր զգողունի
[13] Եբր. փոխեցեր զվարձս իմ տասնիցս

*զու տեսանես՝ [1]իմ է եւ դստերացդ ի-*
*մոց . եւ արդ զի՞նչ արարից դոցա այ-*
*սօր , կամ որդւոց դոցա զոր եւ ծնայ՞։*
44 *Բայց արդ եկ ուխտ դիցուք ես եւ դու,*
*եւ եղիցի ի վկայութիւն ընդ իս եւ ընդ*
*քեզ ։ [2]Եւ ասէ ցնա , Ահա ոչ ոք է ի մի-*
*ջի մերում , բայց Աստուած վկայ ընդ իս*
45 *եւ ընդ քեզ։՞ Եւ առեալ Յակոբայ վէմ՝*
46 *կանգնեաց արձան ։ Եւ ասէ ցեղբարսն*
*իւր , Կուտեցէք քարինս . եւ կուտեցին*
*քարինս եւ արարին բլուր , եւ կերան եւ*
47 *արբին անդ ի վերայ բլրոյն ։ Եւ կոչեաց*
*զնա Լաբան [3]Կարկառ վկայութեան՞. եւ*
48 *Յակոբ կոչեաց զնա [4]Կարկառ վկայ՞։ Եւ*
*ասէ ցնա Լաբան , Բլուրս այս վկայ է*
*ընդ իս եւ ընդ քեզ այսօր ։ [2]Եւ կոչեաց*
*զնա Լաբան Բլուր վկայութեան, եւ Յա-*
*կոբ կոչեաց զնա Բլուր վկայ . եւ ասէ*
*Լաբան ցՅակոբ , Ահա բլուրս այս եւ ար-*
*ձանս այս՝ զոր կանգնեցի ընդ իս եւ ընդ*
*քեզ , վկայ է բլուրս այս , վկայ է ար-*
*ձանս այս .՞ վասն այնորիկ կոչեցաւ ա-*
49 *նուն բլրոյն [4]Վկայութիւն , Եւ [5]Տեսիլն*
*զորմէ՞ ասաց՝ թէ տեսցէ [6]Աստուած ընդ*
*իս եւ ընդ քեզ , զի մեկնիմք ընկեր յըն-*
50 *կերէ ։ Եթէ վշտացուսցես զդստերս իմ,*
*եթէ առցես կանայս առ դստերօք իմովք,*
*զգոյշ լեր՝ զի ոչ ոք է ընդ մեզ որ տե-*
*սանէ . Աստուած լիցի վկայ ընդ իս եւ*
51 *ընդ քեզ ։ Եւ ասէ Լաբան ցՅակոբ , Ա-*
*հա կարկառս այս եւ ահա արձանս զոր*
52 *հաստատեցաք ընդ իս եւ ընդ քեզ . Ե-*
*ղիցի վկայ կարկառս , եւ վկայ արձանս,*
*զի ոչ ես անցից ըստ կարկառս , եւ մի՛*
*դու անցանիցես ըստ բլուրս եւ ըստ ար-*
53 *ձանս ըստ այս՝ չարութեամբ ։ Աստուած*
*Աբրահամու եւ Աստուած Նաքովրայ ե-*
*ղիցի դատաւոր ի միջի մերում , Աս-*
*տուած հարցն նոցա։ Եւ երդուաւ Յակոբ*
54 *յԵրկեւղ հօր իւրոյ Իսահակայ ։ Եւ եզեն*
*Յակոբ զենլիս ի լերինն , եւ կոչեաց*
*զեղբարս իւր ուտել հաց . կերան եւ ար-*
55 *բին , եւ ագան ի լերին անդ ։ Եւ յա-*
*րուցեալ Լաբան ի վաղիւ անդր համ-*
*բուրեաց զորդիս իւր եւ զդստերս իւր*
*եւ օրհնեաց զնոսա , եւ գնաց՝ դարձ ա-*
*րարեալ Լաբանայ ի տեղի իւր ։*

[1] Եբր. իմ է, և դստերաց իմոց զի՞նչ արարից դոցա այսօր , կամ որդւոց նոցա զորս ծնան
[2] Յեբր. գալաադ [3] Քաղդ. Եկար-սահադութա
[4] Եբր. Գաղաադ [5] Եբր. Մասփա (դիտանոց), զի
[6] Եբր. Տէր

ԳԼ . ԼԲ

1 **Ե**ւ *Յակոբ գնաց զճանապարհ իւր։ [2]Եւ*
*հայեցեալ ետես զբանակ Աստուծոյ բա-*
*նակեալ .՞ եւ ընդ առաջ եղեն նմա հրեշ-*
2 *տակք Աստուծոյ ։ Եւ ասէ Յակոբ իբրեւ*
*ետես զնոսա , Այս բանակ Աստուծոյ է։*
*Եւ կոչեաց զանուն տեղւոյն այնորիկ*
*[7]Բանակս ։*
3 *Եւ առաքեաց Յակոբ հրեշտակս յա-*
*ռաջ քան զինքն առ Եսաւ եղբայր իւր*
*յերկիրն ի Սէիր , յաշխարհն Եդովմայ .*
4 *Պատուէր ետ նոցա եւ ասէ , Այսպէսա-*
*սասջիք տեառն իմում Եսաւայ , թէ Այս-*
*պէս ասէ ծառայ քո Յակոբ , Ընդ Լա-*
*բանայ կեցի եւ յամեցի մինչեւ ցայժմ .*
5 *Եւ եղեն իմ արջառ եւ ոչխար եւ էշք,*
*ծառայք եւ աղախնայք . եւ առաքեցի*
*պատմել տեառն իմում Եսաւայ զի գտցէ*
6 *ծառայ քո շնորհս առաջի քո ։ Եւ դար-*
*ձեալ հրեշտակացն առ Յակոբ՝ ասեն ,*
*Զոպաք առ Եսաւ եղբայր քո , եւ գայ ընդ*
*առաջ քո, եւ չորեք հարիւր այր ընդ նմա։*
7 *Զահի հարաւ Յակոբ , եւ տարակու-*
*սեալ էր . եւ զատոյց զժողովուրդն որ*
*ընդ նմա էր , եւ զարջառ եւ զոչխար եւ*
8 *զուղտս յերկուս բանակս . Եւ ասէ Յա-*
*կոբ , Եթէ եկեսցէ Եսաւ յառաջին բա-*
*նակն եւ հարցէ զնա , ապրեսցի երկրորդ*
9 *բանակն ։ Եւ ասէ Յակոբ , Աստուած հօր*
*իմոյ Աբրահամու եւ Աստուած հօր իմոյ*
*Իսահակայ , Տէր , որ ասացեր ցիս թէ*
*Երթ յերկիր ծննդեան քո եւ բարի ա-*
10 *րարից քեզ . Զեմ բաւական ամենայն*
*արդարութեանն եւ ճշմարտութեանն զոր*
*արարեր ընդ ծառայի քում . զի ցուպ*
*ի ձեռն անցի ընդ այս Յորդանան , եւ*
11 *արդ աւասիկ եղէ յերկուս բանակս ։ Եւ*
*ապրեցո զիս ի ձեռաց եղբօր իմոյ Ե-*
*սաւայ . զի զահի հարեալ եմ ես ի նմանէ,*
*գուցէ եկեալ հարկանիցէ զիս , մայր առ*
12 *մանկանս։ Եւ դու ասացեր թէ [8]Բարի արա-*
*րից քեզ՞, եւ եդից զզաւակ քո իբրեւ զա-*
*ւազ ծովու որ ոչ թուեսցի ի բազմութենէ ։*
13 *Եւ ննջեաց անդ զայն գիշեր . եւ առ*
*յորոց ածէրն ձեռամբ իւրով պատարագս,*
*եւ առաքեաց Եսաւայ եղբօր իւրում ,*
14 *Այծս երկերիւր , քաղս քսան , մաքիս*
15 *երկերիւր , խոյս քսան, Ուղտս [9]ծնեալս*

[7] Եբր. Մանայիմ [8] Եբր. Առնելով արարից քեզ բարի [9] Եբր. ստնտուս

կոզամբք հանդերձ երեսուն, կովս քա-
ռասուն եւ ցուլս տասն, էշս քսան եւ
16 մտրուկս տասն։ Եւ ետ ի ձեռս ծառա-
յից իւրոց հօտս հօտս առանձինն. եւ ա-
սէ ցծառայսն իւր, երթայք դուք յառաջ
քան զիս, եւ բացագոյնս ի միմեանց ստա-
17 նիցիք հօտս ի հօտից։ Պատուիրեաց ա-
ռաջնոյն եւ ասէ, Եթէ պատահիցէ քեզ
Եսաւ եղբայր իմ, եւ հարցանիցէ թէ Ո՞յր
ես եւ յո՞ երթաս եւ ո՞յր է այդ որ ա-
18 ռաջի քո երթայ, Ասասցես, թէ Ծառայի
քո Յակոբայ պատարագք են, զոր ա-
ռաքեաց տեառն իւրում Եսաւայ. եւ
19 ինքն զկնի մեր գայ։ Պատուիրեաց [1]ա-
ռաջնումն եւ երկրորդին եւ երրորդին,
եւ ամենեցուն որ երթային յառաջ զհետ
խաշանցն՝ ասէր, Ըստ բանիս այսմիկ
խօսեսջիք ընդ Եսաւայ, յորժամ գտա-
20 նիցէք զնա. Եւ ասասջիք, Ահա ծառայ
քո Յակոբ գայ զհետ մեր. քանզի ասաց
թէ Ցածուցից զերեսս նորա պատարա-
գօքդ որ երթան առաջի, եւ ապա տե-
սից զերեսս նորա, թերեւս տրուսցէ մե-
21 ծարանս երեսաց իմոց։ Եւ երթային յա-
ռաջագոյն ընծայքն քան զնա. եւ ինքն
ննջեաց զայն գիշեր անդէն ի բանակին։
22 Եւ յարուցեալ ի նմին գիշերի՝ առ զերկուս
կանայսն եւ զերկուս աղախնայսն եւ
զմետասան որդիս իւր, եւ անց ընդ հունն
23 Յաբոկայ։ Եւ առ անցոյց զնոսա ընդ
ձորն, եւ զամենայն ինչ որ իւր էր։
24 Եւ մնաց Յակոբ միայն. եւ մարտեաւ
25 այր մի ընդ նմա մինչեւ ցառաւօտ. Եւ
իբրեւ ետես թէ ոչ յաղթէ նմա, բուռն
եհար զամոլաջլէ զբարձի նորա, եւ ըն-
դարմացոյց զամոլաջիլ զբարձին Յակոբայ
26 ի կռուելն իւրում ընդ նմա։ Եւ ասէ
ցնա, Արձակեա զիս, քանզի այգ եղեւ.
եւ նա ասէ, Ոչ արձակեցից զքեզ, ե-
27 թէ ոչ օրհնեսցես զիս։ Եւ նա ասէ ցսա,
Զի՞նչ անուն է քո. եւ սա ասէ ցնա,
28 Յակոբ։ Եւ ասէ ցսա, Յայսմ հետէ ոչ
կոչեսցեն զանուն քո Յակոբ, այլ [2]Իս-
րայէլ եղիցի անուն քո. զի ժուժկալե-
ցեր ընդ Աստուծոյ եւ ընդ մարդկան,
29 [3]զօրաւոր լիջիր"։ Եհարց Յակոբ եւ ասէ,
Պատմեա ինձ զանուն քո։ Եւ ասէ, Զի՞
հարցանես զանուանէ իմմէ. եւ օրհնեաց
30 զնա անդ։ Եւ կոչեաց Յակոբ զանուն
տեղւոյն այնորիկ [4]Տեսիլ Աստուծոյ". զի
տեսի զԱստուած դէմ յանդիման, եւ
ապրեցաւ անձն իմ։
31 Եւ ծագեաց նմա արեւ իբրեւ [5]անց
Տեսիլն Աստուծոյ. եւ նա կաղայր եր-
32 թայր ի զբարձէ անտի։ Վասն այնորիկ
ոչ ուտեն որդիքն Իսրայելի զամոլաջիլն
զոր ընդարմացոյց, որ է ի վերայ տափ-
տակի զբարձին, մինչեւ ցայսօր. զի բուռն
եհար զտափտակէ զբարձին Յակոբայ, եւ
ընդարմացոյց զամոլաջիլ նորա։

## ԳԼ. ԼԳ

1 Զաչս իւր ի վեր եբարձ Յակոբ եւ ե-
տես, Եւ ահա Եսաւ [1]եղբայր իւր" գայր,
եւ ընդ նմա արք չորեք հարեւր. եւ
բաշխեաց Յակոբ զմանկունսն ի Լիա եւ
2 յՌաքէլ, եւ յերկուս աղախնայսն։ Եւ
արար զերկուս աղախնայսն եւ զորդիս
նոցա առաջի, եւ զԼիա եւ զորդիս նո-
րա զկնի, եւ զՌաքէլ եւ զՅովսէփ հուսկ
3 յետոյ։ Եւ ինքն անց յառաջ քան զնո-
սա, եւ երկիր եպագ եւթն անգամ ի
վերայ երկրի՝ մինչեւ մերձենալ առ եղ-
4 բայրն իւր։ Եւ ընթացաւ Եսաւ ընդ ա-
ռաջ նորա. գիրկս արկ նմա [1]եւ համ-
բուրեաց", եւ անկաւ ի վերայ պարա-
նոցի նորա եւ համբուրեաց զնա. եւ լա-
5 ցին երկոքեան։ Եւ հայեցեալ ի վեր ե-
տես զկանայսն եւ զմանկունս, եւ ա-
սէ, Դոքա զի՞նչ են քո. եւ նա ասէ,
Մանկունք իմ են, որովք ողորմեցաւ
6 Աստուած ծառայի քում։ Եւ մատեան
աղախնայքն եւ որդիք նոցա, եւ երկիր
7 պագին նմա։ Եւ մատեաւ Լիա եւ որ-
դիք իւր եւ երկիր պագին նմա. յետոյ
մատեաւ Յովսէփ եւ Ռաքէլ եւ երկիր
8 պագին նմա։ Եւ ասէ, Զի՞նչ էր այն
ամենայն չու որ ինձ դիպեցաւ. եւ նա
ասէ, Զի գտցէ շնորհս ծառայ քո ա-
9 ռաջի քո։ Եւ ասէ Եսաւ, Կայ եւ իմ
10 շատ, եղբայր, քեզ լիցի քոյդ։ Եւ ասէ
Յակոբ, Մի՛ այդպէս, եթէ գտի շնորհս
առաջի քո, ընկալ զընծայսն ի ձեռաց
իմոց. քանզի այնպէս տեսի զերեսս քո՝
որպէս ոք տեսանիցէ զերեսս Աստուծոյ,
11 եւ զուարթացիս ընդ իս։ Եւ առ զօրհ-
նութիւնդ իմ զոր մատուցի քեզ. զի
ողորմեցաւ ինձ Աստուած, եւ է իմ ա-
մենայն ինչ. եւ բռնադատեաց զնա, եւ
12 առ։ Եւ ասէ, Չուեսցուք գնասցուք եւ
13 [6]երթիցուք զուգզորդն"։ Եւ ասէ ցնա,

[1]Եբր. նոյնպէս [2]Այսինքն, որ մարտնչի ընդ Աստուծոյ [3]Եբր. և զօրաւոր եղեր [4]Եբր. Փանուէլ

[5]Եբր. անց ընդ [6]Եբր. երթայց առաջի քո

Տէր իմ ինքնին գիտէ, զի մանկունքս
մատաղ են, եւ ոչխարք եւ արջառոյ ծը-
նունդ արձակեալ է. եւ եթէ մի օր սաս-
տկեմ զզոսա, մեռանին ամենայն խա-
14 շինքդ։ Այլ յառաջեսցէ տէր իմ քան
զծառայ իւր, եւ ես [1]ըստ կարի եւ ըստ
պարապոյ ճանապարհիդ" առաջի իմ, եւ
ըստ կարգաւորել մանկանց [2]իմոց խաղա-
ցից, մինչեւ եկից առ տէր իմ ի Սէիր։
15 Եւ ասէ Եսաւ, Իսկ թողից առ քեզ ի
ժողովրդենէ աստի որ ընդ իս են. եւ
նա ասէ, Ընդէ՞ր իցէ ինձ այդ, շատ է
16 զի գտի շնորհս առաջի քո, տէր։ Եւ դար-
ձաւ յաւուր յայնմիկ Եսաւ ընդ ճանա-
պարհ իւր ի Սէիր։
17 Եւ Յակոբ չուեաց ի [3]Խորանս եւ ա-
րար իւր անդ տունս, եւ խաշանց իւ-
րոց արար [3]զաղարս. վասն այնորիկ կոչ-
եաց զանուն տեղւոյն այնորիկ [3]Խորանս։
18 Եւ եկն Յակոբ ի Սաղէմ քաղաք Սի-
կիմացւոց, որ է յերկրին Քանանացւոց,
իբրեւ եկն ի Միջագետաց Ասորւոց, եւ
19 բնակեցաւ յանդիման քաղաքին։ Եւ
ստացաւ զվիճակ անդին ուր եհար զխո-
րանն իւր՝ յԵմովրայ հօրէ Սիւքեմայ հա-
20 րեւր [4]ոչխարի։ Եւ շինեաց անդ սեղան,
եւ [5]կարդաց զԱստուած Իսրայելի"։

ԳԼ. ԼԴ

1 Եւ ել Դինա դուստր Լիայ՝ զոր ծնաւ
Յակոբայ, ի զնին դստերաց աշխարհին։
2 Եւ ետես զնա Սիւքեմ որդի Եմովրայ
[6]Քոռեցի, որ իշխանն էր երկրին, եւ առ
զնա, եւ ննջեաց ընդ նմա, եւ տա-
3 ռապեցոյց զնա։ Եւ ուշ եդեալ Դինայի
դստերն Յակոբայ՝ սիրեաց զկոյսն, եւ
4 խօսեցաւ ըստ մտաց կուսին։ Եւ խօ-
սեցաւ Սիւքեմ ընդ Եմովրայ հօր իւրոյ
եւ ասէ, Առ դու ինձ զաղջիկս զայս
5 կնութեան։ Եւ լուաւ Յակոբ եթէ պղ-
ծեաց որդի Եմովրայ զԴինա զդուստր
նորա. եւ որդիք նորա էին ի խաշինս
ի դաշտի. լուռ եղեւ Յակոբ մինչեւ ե-
6 կին նոքա։ Եւ ել Եմովր հայր Սիւ-
7 քեմայ առ Յակոբ խօսել ընդ նմա։ Ե-
կին եւ որդիքն Յակոբայ ի դաշտէ. իբ-
րեւ լուան, ստրջացան արքն, եւ տրտմու-
թիւն էր նոցա յոյժ. զի խայտառա-
կութիւն արար յԻսրայէլի, ննջելով
առ դուստրն Յակոբայ, եւ ոչ այնպէս
8 վճարեցի։ Եւ խօսեցաւ ընդ նոսա Եմովր
եւ ասէ, Սիւքեմ որդի իմ սիրեաց ող-
ջովք չափ զդուստրն ձեր. արդ տուք
9 զնա նմա կնութեան, Եւ արարէք ընդ
մեզ խնամութիւն. զդստերս ձեր տուք
մեզ, եւ զդստերս մեր առէք որդւոց
10 ձերոց. Եւ բնակեցէք ի միջի մերում,
եւ երկիրդ ահա ընդարձակ է առաջի
ձեր, եւ բնակեցէք եւ չահեցարուք ի
դմա, եւ ստացարուք ստացուածս ի
11 դմա։ Եւ ասէ Սիւքեմ ցհայր նորա եւ
ցեղբարս նորա, Գտից շնորհս առաջի
12 ձեր, եւ զոր ինչ ասիցէք՝ տացուք։ Յա-
ճախեցէք յոյժ զվարձանս եւ զօժիտս,
եւ տաց՝ որչափ եւ ասիցէք. եւ տուք
13 ինձ զաղջիկն զայն կնութեան։ Պատաս-
խանի ետուն որդիքն Յակոբայ Սիւքե-
մայ եւ Եմովրայ հօր նորա նենգութեամբ,
եւ [7]ասեն ցնոսա", (վասն զի պղծեցին
14 զԴինա զքոյր նոցա,) Եւ ասեն [8]Շմաւոն
եւ Ղեւի եղբարքն Դինայ՝ որդիքն Լիայ",
Ոչ կարեմք առնել զայդ բան, տալ զքոյրն
մեր առն անթլփատի, քանզի նախատինք
15 են մեզ. Բայց այսու [9]նմանեսցուք ձեզ,
եւ բնակեսցուք ի միջի ձերում", եթէ
լինիցիք իբրեւ զմեզ եւ դուք՝ ի թլփա-
16 տել ձեզ զամենայն արու, Եւ տացուք
զդստերս մեր ձեզ, եւ ի դստերաց ձերոց
առցուք մեզ կանայս, եւ բնակեսցուք
առ ձեզ, եւ եղիցուք իբրեւ ազգ մի։
17 Ապա թէ ոչ լուիցէք մեզ՝ թլփատել, առ-
18 եալ [10]զդստերս մեր ի բաց գնասցուք։ Եւ
հաճոյ թուեցան բանքն առաջի Եմովրայ,
եւ առաջի Սիւքեմայ որդւոյ Եմովրայ։
19 Եւ ոչ յամեաց պատանին առնել զբանն,
զի յոյժ հաւանեալ էր ի դստերն Յակոբայ.
եւ նա էր պատուականագոյն քան զա-
մենեսեան որ ի տան հօր նորա էին։
20 Եւ եկին Եմովր եւ Սիւքեմ որդի նո-
րա ի դուռն քաղաքին իւրեանց, եւ խօ-
սեցան ընդ արս քաղաքին իւրեանց եւ
21 ասեն, Արքն այն խաղաղութեամբ են
ընդ մեզ. արդ բնակեսցեն յերկրիս եւ
չահեսցին ի սմա. զի երկիրս ընդար-
ձակ է առաջի նոցա. զդստերս նոցա առ-
ցուք մեզ կանայս, եւ զդստերս մեր

---

[1] Եբր. մեղմով ըստ գնացից խաշանցդ [2] Յեբր. [illegible] [3] Եբր. Սոկքովթ, [illegible], փարախք [4] Կամ, արծաթոյ [5] Եբր. կոչեաց զնա Աստուած, Աստուած Իսրայելի [6] Եբր. Խեւացի

[7] Եբր. խօսեցան [8] Եբր. ցնոսա [9] Եբր. հաւանեսցուք ձեզ [10] Եբր. զդուստր

22 տացուք նոցա։ Բայց միայն այսու [1]նմա-
նեսցեն մեզ արքարն՝ բնակել ընդ մեզ
լինել ազգ մի, ի թլփատել մեզ զամե-
նայն արու, որպէս նոքայն թլփատեալ
23 են։ Եւ ինչք նոցա եւ անասուն նոցա
եւ չորքոտանի նոցա ո՞չ ապաքէն մեր
լինիցի. բայց այնու եւեթ [2]նմանեսցուք
նոցա, եւ բնակեսցեն ի միջի մերում։
24 Եւ լուան Եմովրայ եւ Սիւքեմայ որդ-
ւոյ նորա ամենեքին որ ելանէին ընդ
դուռն քաղաքին [3]իւրեանց. եւ թլփա-
տեցին զմարմին անթլփատութեան իւր-
եանց ամենայն արու, ամենեքին որ ե-
լանէին ընդ դուռն քաղաքի նորա։
25 Եւ եղեւ յաւուրն երրորդի մինչդեռ
էին նոքա ի ցաւսն, առին երկու որդիքն
Յակոբայ, Շմաւոն եւ Ղեւի եղբարք
Դինայ՝ իւրաքանչիւր զսուր իւր, եւ
մտին ի քաղաքն [4]կազմութեամբ, եւ կո-
26 տորեցին զամենայն արու. Եւ զԵմովր
եւ զՍիւքեմ զորդի նորա սպանին ի սուր
սուսերի. եւ առին զԴինա ի տանէ Սիւ-
27 քեմայ եւ ելին։ Եւ որդիքն Յակոբայ
մտին ի վերայ վիրաւորացն, եւ առին
աւար զքաղաքն, յորում պղծեցին զԴինա
28 զքոյրն նոցա. Զարջառ եւ զոչխար եւ
զէշս նոցա [5]որ էին՛՛ ի քաղաքին, եւ որ
29 ինչ ի բացի էր՝ առին. Եւ զամենայն
[6]մարդազերծ նոցա, եւ զամենայն՛՛ զկահ
եւ զկարասի նոցա, [7]եւ զկանայս նոցա
գերեցին, եւ յափշտակեցին որ ինչ էր
30 [6]ի քաղաքին եւ որ ինչ՛՛ ի տունս։ Եւ ա-
սէ Յակոբ ցՇմաւոն եւ ցՂեւի, [8]Ատելի
արարէք զիս, երեւել անզգամ ամենայն՛՛
բնակչաց երկրիս ի մէջ Քանանացւոց
եւ Փերեզացւոց. եւ ես սակաւաւոր եմ
թուով, արդ եթէ ժողովիցին ի վերայ իմ
եւ հարկանիցեն զիս, սատակելով սա-
31 տակիցիմ ե՛ւ ես ե՛ւ տուն իմ։ Եւ ասեն,
[9]Իսկ զի՞րդ զի իբրեւ զբոզ քարշեսցին
զքոյրն մեր ։՛՛

## ԳԼ. ԼԵ

1 Եւ ասէ Աստուած ցՅակոբ, Արի ել
[6]ի տեղին ի Բեթէլ, եւ անդ բնակեսցես,
եւ արասցես անդ սեղան Աստուծոյ որ
երեւեցաւն քեզ ի փախչելն քո յերեսաց
2 Եսաւայ եղբօր քո։ Եւ ասէ Յակոբ
ցընտանիս իւր եւ ցամենեսին որ ընդ
նմա էին, Ի բաց արէք զաստուածսդ
օտարոտիս որ ընդ ձեզ են ի միջոյ ձերմէ,
եւ սրբեցարուք, եւ փոխեցէք զպատ-
3 մուճանս ձեր. Եւ յարուցեալ ելցուք ի
Բեթէլ, եւ արասցուք անդ սեղան Աս-
տուծոյ, որ լուաւ ինձ յաւուր նեղու-
թեան, որ էր ընդ իս եւ ապրեցոյց զիս
4 ի ճանապարհին՝ զոր գնացի։ Եւ ետուն
ցՅակոբ զաստուածսն օտարոտիս որ էին
ի ձեռս նոցա, եւ զգինդս որ յականջս
իւրեանց. եւ ծածկեաց զնոսա Յա-
կոբ ի ներքոյ բեւեկնոյն [10]ի Սիկիմ, եւ
կորոյս զնոսա մինչեւ ցայսօր ժամա-
5 նակի։ Եւ չուեաց Իսրայէլ ի Սիկիմայ՛՛.
եւ եղեւ ահ Աստուծոյ ի վերայ քաղա-
քացն որ շուրջ զնովաւ, եւ ոչ ելին
6 զհետ որդւոցն [11]Իսրայելի։ Եւ եկն Յա-
կոբ ի Լուզ, որ է յերկրին Քանանացւոց,
այն ինքն է Բեթէլ, ինքն եւ ամենայն
7 ժողովուրդն որ ընդ նմա. Եւ շինեաց
անդ սեղան, եւ կոչեաց զանուն տեղ-
ւոյն [12]Բեթէլ. զի անդ երեւեցաւ նմա Աս-
տուած ի փախչել նորա յերեսաց Եսաւայ
եղբօր իւրոյ։
8 Եւ մեռաւ Դեբովրա դայեակն Ռեբե-
կայ, եւ թաղեցաւ ի ներքոյ Բեթելայ
ընդ կաղնեաւն. եւ կոչեաց զանուն նո-
րա Կաղնի սգոյ։
9 Եւ երեւեցաւ Աստուած Յակոբայ՝
[6]մինչդեռ անդ էր ի Լուզ,՛՛ յորժամ եկն
ի Միջագետաց Ասորւոց, եւ օրհնեաց
10 զնա Աստուած։ Եւ ասէ ցնա Աստուած,
Անուն քո Յակոբ՝ ոչ եւս կոչեսցի Յակոբ,
այլ Իսրայէլ եղիցի անուն քո. եւ կոչ-
11 եաց զանուն նորա Իսրայէլ։ Եւ ասէ
ցնա Աստուած, Ես եմ Աստուած [13]քո
բաւական՛՛. աճեաջիր եւ բազմասջիր.
ազգք եւ ժողովք ազգաց եղիցին ի քէն,
12 եւ թագաւորք յերանաց քոց ելցեն։ Եւ
զերկիրդ զոր ետու Աբրահամու եւ Իսա-
հակայ՝ քեզ տաց զդա, քեզ եղիցի, եւ
զաւակի քում յետ քո տաց զերկիրդ զայդ։
13 Եւ վերացաւ ի նմանէ Աստուած ի տեղ-
14 ւոջէն ուր խօսեցաւ ընդ նմա։ Եւ կանգ-
նեաց Յակոբ արձան ի տեղւոջն ուր

[1] Օրէ. հաւանեսցին [2] Օրէ. հաւանեսցուք [3] Օրէ. նորա [4] Օրէ. համարձակութեամբ [5] Օրէ. եւ որ ինչ էր [6] Յօրէ. դ–խ–ե [7] Օրէ. և զամենայն մանկունս նոցա և [8] Օրէ. Տագնապեցուցէք զիս լինել գարշելի [9] Օրէ. Մի թէ իբրեւ ընդ բոզի՞ պարտ էր գնալ ընդ քեռ մերում։

[10] Օրէ. ի Սիւքեմ։ (5) Եւ չուեցին [11] Օրէ. Յակոբայ [12] Օրէ. Աստուած Բեթելայ [13] Օրէ. Ամենակալ

խօսեցաւ ընդ նմա, արձան քարեղէն,
եւ նուիրեաց ի նմա նուէրս, եւ արկ ի
15 վերայ նորա եւղ։ Եւ կոչեաց զանուն
տեղւոյն ուր խօսեցաւ ընդ նմա Աս-
տուած՝ Բեթէլ։
16 Եւ [1]չուեաց ի Բեթելայ. եւ եղեւ
իբրեւ մերձեցաւ ի Քաբրաթա երկիր,
մտանել" յԵփրաթա, ծնաւ Ռաքէլ, եւ
17 դժուարածին եղեւ ի ծննդեանն։ Եւ եղեւ
ի վտանգին նորա ի ծննդեանն, ասէ
ցնա ծնուցիչն, Քաջալերեաց, զի եւ
18 այդ եւս քո ուստր է։ Եւ եղեւ ընդ
հանել ոգւոյն, քանզի մեռաւ, կոչեաց
զանուն նորա Որդի վշտաց իմոց. եւ
19 հայրն կոչեաց զնա [2]Բենիամին։ Մեռաւ
Ռաքէլ եւ թաղեցաւ ի ճանապարհին Եփ-
20 րաթայ, այն ինքն է Բեթղեհէմ։ Եւ կանգ-
նեաց Յակոբ արձան ի վերայ շիրմին նո-
րա, այն է արձան շիրմի Ռաքելայ մին-
չեւ ցայսօր ժամանակի։
21 Եւ չուեաց Իսրայէլ եւ եհար զխորան
22 իւր յայնկոյս աշտարակին Գադերայ։ Եւ
եղեւ իբրեւ բնակեաց Իսրայէլ յերկրին
յայնմիկ, գնաց Ռուբէն եւ ննջեաց ընդ
Բալլայ հարճի հօր իւրոյ. լուաւ Իսրայէլ
[3]եւ չար թուեցաւ առաջի նորա"։
Եւ էին որդիք Յակոբայ երկոտասանք.
23 Որդիք Լիայ, անդրանիկ Յակոբայ՝ Ռու-
բէն, Շմաւոն, Ղեւի, Յուդա, Իսաքար,
24 Զաբուղոն. Եւ որդիք Ռաքելի՝ Յովսէփ
25 եւ Բենիամին. Եւ որդիք Բալլայ նա-
ժշտին Ռաքելայ՝ Դան եւ Նեփթաղիմ։
26 Եւ որդիք Զելփայ նաժշտին Լիայ՝ Գադ
եւ Ասեր։ Այս են որդիք Յակոբայ, որ
եղեն նմա ի Միջագետս Ասորւոց։
27 Եւ եկն Յակոբ առ Իսահակ հայր իւր
ի Մամբրէ՝ [4]ի քաղաք դաշտին", այն է
Քեբրոն, [3]յերկրին Քանանացւոց," ուր
պանդխտեցան Աբրահամ եւ Իսահակ։
28 Եւ եղեն ամենայն աւուրք Իսահակայ
զոր եկեաց՝ ամք հարեւր եւ ութսուն։
29 Եւ պակասեալ Իսահակայ մեռաւ, եւ
յաւելաւ յազգ իւր, ծերացեալ եւ լի
աւուրբք. եւ թաղեցին զնա Եսաւ եւ
Յակոբ որդիք իւր։

ԳԼ. ԼԶ

1 **Ե**ւ այս են ծնունդք Եսաւայ, նա է Ե-
2 դովմ։ Եւ առ իւր Եսաւ կանայս ի դըս-
տերաց Քանանացւոց, զԱդդա զդուստր
Ելոնայ Քետացւոյ, եւ զՈղիբամա դուստր
Անայի՝ որդւոյ Սեբեգոնի Խեւացւոյ,
3 Եւ զԲասեմաթ զդուստր Իսմայելի՝ զքոյր
4 Նաբէութայ։ Եւ ծնաւ Ադդա Եսաւայ
զԵղիփազ, եւ Բասեմաթ ծնաւ զՌա-
5 գուէլ, Եւ Ողիբամա ծնաւ զՅէուս եւ
զԵգղոմ եւ զԿորխ. սոքա են որդիք Ե-
սաւայ, որ եղեն նմա յերկրին Քանա-
նացւոց։
6 Եւ առ Եսաւ զկանայս իւր եւ զուս-
տերս եւ զդստերս իւր եւ զամենայն
մարդիկ տան իւրոյ, եւ զամենայն ինչս
եւ զանասուն, եւ զամենայն ինչ զոր
ստացաւ [3]եւ զոր արար" յերկրին Քանա-
նացւոց, եւ գնաց յերկրէն Քանանա-
ցւոց յերեսաց Յակոբայ եղբօր իւրոյ։
7 Զի էին բազում ինչք նոցա ի միասին
բնակելոյ. եւ ոչ կարէր երկիրն պան-
դըխտութեան հանդարտել նոցա ի բազ-
8 մութենէ ընչից իւրեանց։ Եւ բնակե-
ցաւ Եսաւ ի լերինն Սէիր. Եսաւ՝ որ նա
ինքն է Եդովմ։
9 Եւ այս են ծնունդք Եսաւայ՝ հօրն Ե-
10 դովմայեցւոց, ի լերինն Սէիր։ Եւ այս
են անուանք որդւոցն Եսաւայ. Եղիփազ
որդի Ադդայի կնոջ Եսաւայ, եւ Ռա-
գուէլ որդի Բասեմաթայ կնոջ Եսաւայ։
11 Եւ եղեն որդիք Եղիփազայ՝ Թեման,
Ովմար, Սովբար, Գոթոմ եւ Կենեզ։
12 Եւ Թամնա էր հարճ Եղիփազու որդւոյ
Եսաւայ, եւ ծնաւ Եղիփազու զԱմաղէկ.
սոքա են որդիք Ադդայի կնոջ Եսաւայ։
13 Եւ այս են որդիք Ռագուելի՝ Նաքովթ,
Զարեհ, Սամմա եւ Մեզա. սոքա են որ-
14 դիք Բասեմաթայ կնոջ Եսաւայ։ Եւ այս
են որդիք Ողիբամայ դստեր Անայի որդւոյ
Սեբեգոնի կնոջ Եսաւայ, եւ ծնաւ Ե-
սաւայ զՅէուս եւ զԵգղոմ եւ զԿորխ։
15 Սոքա են իշխանք՝ որդիք Եսաւայ.
որդիք Եղիփազու անդրանկանն Եսաւայ,
իշխան Թեման, իշխան Ովմար, իշխան
16 Սովփար, իշխան Կենեզ, Իշխան Կորխ,
իշխան Գոթոմ, իշխան Ամաղէկ. սոքա
են իշխանք Եղիփազու յերկրին Եդով-
17 մայեցւոց. սոքա են որդիք Ադդայի։ Եւ
այս են որդիք Ռագուելի որդւոյ Եսաւայ.
իշխան Նաքովթ, իշխան Զարեհ, իշխան
Սամմա, իշխան Մոզէ. այս են իշխանք
Ռագուելի յերկրին Եդովմայ. սոքա են որ-
18 դիք Բասեմաթայ կնոջ Եսաւայ։ Եւ այս

[1]Եբր. չուեցին ի Բեթելայ, և էր տակաւին ճանապարհ ի մտանել [2]Այսինքն, որդի աջոյ [3]Յեբր. պակասէ [4]Եբր. ի քաղաքին Արբոկայ (տե՛ս Գլ. ԻԳ. 2)

են որդիք Ողիբամայ կնոջ Եսաւայ. իշ-
խան Յէուս, իշխան Յեգղոմ, իշխան
Կորխ. այս են իշխանք Ողիբամայ դստեր
19 Անայի կնոջ Եսաւայ։ Այս են որդիք Ե-
սաւայ, եւ այս են իշխանք նոցա, [1]եւ
20 այս են որդիք" Եդովմայ։ Եւ այս են որդիք
Սէիրայ Քոռացւոյ որ բնակեալ էր յերկ-
րին. Ղովտան, Սովբաղ, Սեբեգոնն, Անա,
21 Դեսոն եւ Ասեր եւ Ռիսոն. սոքա են
իշխանք Քոռեցւոյն, որդւոյ Սէիրայ յերկ-
22 րին Եդովմայ։ Եւ եղեն որդիք Ղովտանայ՝
Քոռի եւ Եմման, եւ քոյր Ղովտանայ՝
23 Թամնա։ Եւ սոքա են որդիք Սովբաղայ.
Գաղոմ եւ Մանաքաթ եւ Գեբաղ եւ
24 Սովփար եւ Ովնան։ Եւ այս են որդիք
Սեբեգոնի. Այէ եւ Ովնան. այս Ով-
նան է որ եգիտ [2]զապրեւրն յանապատի՝
մինչ արածէր զէշսն Սեբեգոնի հօր
25 իւրոյ։ Եւ այս են որդիք Անայի. Դեսոն
26 եւ Ողիբամա դուստր Անայի. Եւ այս են
որդիք Դեսոնայ. Ամադան եւ Եսբան
27 եւ Յեթրան եւ Քառան։ Եւ այս են որ-
դիք Ասերայ. Բալլան եւ Զուկան եւ
28 [3]Ոմնիկան եւ" Ուկամ։ Եւ այս են որ-
29 դիք [4]Ռիսոնի. Ովս եւ Առան։ Եւ այս
են իշխանք Քոռեայ. իշխան Ղովտան,
իշխան Սովբաղ, իշխան Սեբեգոն, իշխան
30 Անա, Իշխան Դեսոն, իշխան Ասեր, իշ-
խան [5]Ռիսոն. այս են իշխանք Քոռեայ ի
պետութիւնս իւրեանց յերկրին Եդովմայ։
31 Եւ այս թագաւորք են որ թագաւո-
րեցին յերկրին Եդովմայեցւոց, մինչչեւ
թագաւորեալ էր թագաւոր յԻսրայելի։
32 Եւ թագաւորեաց յԵդովմ Բաղա որդի
Սեպփովրայ. եւ անուն քաղաքին նո-
33 րա Դեննաբա։ Եւ մեռաւ Բաղա, եւ թա-
գաւորեաց ընդ նորա Յովբաբ որդի Զա-
34 րեհի ի Բոսորայ։ Եւ մեռաւ Յովբաբ,
եւ թագաւորեաց ընդ նորա Ասոմ յերկ-
35 րէ Թեմանացւոց։ Եւ մեռաւ Ասոմ, եւ
թագաւորեաց ընդ նորա Ադադ որդի
Բադադայ, որ կոտորեաց զՄադիամ ի
դաշտին Մովաբացւոց. եւ անուն քա-
36 ղաքի նորա Գեթէմ։ Եւ մեռաւ Ադադ,
եւ թագաւորեաց ընդ նորա Սամադա ի
37 Մասեկկայ։ Եւ մեռաւ Սամադա, եւ թա-
գաւորեաց ընդ նորա Սաւուղ յՌովոթայ՝
38 որ առ Գետեզերն։ Եւ մեռաւ Սաւուղ,
եւ թագաւորեաց ընդ նորա Բաղլայենան
39 որդի Աքոբորայ։ Եւ մեռաւ Բաղլայե-
նան որդի Աքոբորայ, եւ թագաւորեաց
ընդ նորա Ադադ [3]որդի Բարադայ". եւ
անուն քաղաքի նորա Փոգով, եւ անուն
կնոջ նորա Մետաբէէլ դուստր Մատ-
40 րեթայ, որդւոյ Մազովբայ։ Այս են ան-
ուանք [3]որդւոցն Եսաւայ եւ" իշխանացն
Եսաւայ յազգս իւրեանց, ըստ տեղիս
իւրեանց՝ [3]յաշխարհս իւրեանց, եւ ի
տոհմս իւրեանց" ըստ անուանց նոցա.
իշխան Թամանա, իշխան Ղովտան, իշ-
41 խան Յեթաթ, Իշխան Ողիբամաս, իշ-
42 խան Հելայ, իշխան Փենոն, Իշխան
Կենէզ, իշխան Թեման, իշխան Մաղար,
43 Իշխան Մագէդիէլ, իշխան Զափոյին։
Սոքա են իշխանք Եդովմայեցւոց ըստ
բնակութեան յերկրի ստացուածոց իւր-
եանց. եւ այս է Եսաւ հայր Եդովմայ։

## ԳԼ. ԼԷ

1 Եւ բնակէր Յակոբ յերկրին ուր պան-
դխտեցաւ հայր նորա, յերկրին Քանանա-
2 ցւոց։ Եւ այս են ծնունդք Յակոբայ. Յով-
սէփ եւթնեւտասնամեայ էր մինչ արա-
ծէր եղբարբքն հանդերձ խաշինս. եւ էր
կրտսեր ընդ որդիսն Բալլայ եւ ընդ որդիսն
Զելփայ կանանց հօր իւրոյ. եւ [6]բերէին
համբաւ չար զՅովսեփայ առ Իսրայէլ
3 հայրն իւրեանց։ Բայց" Իսրայէլ սիրէր
զՅովսէփ առաւել քան զամենայն որդիսն
իւր, քանզի որդի ծերութեան էր նորա.
եւ արար նմա պատմուճան ծաղկեայ։
4 Իբրեւ տեսին եղբարքն նորա թէ սիրէ
զնա հայրն քան զամենայն որդիս իւր,
ատեցին զնա, եւ ոչ կարէին խօսել ինչ
ընդ նմա խաղաղութեամբ։
5 Եւ եւս երազ Յովսէփ եւ պատմեաց եղ-
բարցն իւրոց. եւ յաւելին եւս ատել
6 զնա։ Եւ ասէ ցնոսա, Լուարուք զե-
7 րազն զոր տեսի. Թուէր եթէ որայ կա-
պէաք ի դաշտի միում, եւ կանգնեցաւ
որայն իմ եկաց ուղղորդ. եւ դարձան
որայքն ձեր եւ պագին երկիր իմում
8 որայոյն։ Եւ ասեն ցնա եղբարքն իւր,
Միթէ թագաւորելո՞վ թագաւորեսցես ի
վերայ մեր, կամ տիրելո՞վ տիրեսցես
մեզ. եւ յաւելին եւս ատել զնա վասն
երազոցն նորա եւ վասն բանիցն նորա։

[1] Եբր. այսինքն [2] Եբր. զՋերմուկսն [3] Յեբր. պակասէ [4] Եբր. Դեսոնայ [5] Եբր. Դեսան

[6] Եբր. բերէր Յովսէփ համբաւ չար զնոցանէ առ հայր նոցա։ (3) Եւ

9 Եւ եանս մեւս եւս երազ, եւ պատմեաց
[1]հօր իւրում եւ՝ եղբարց իւրոց, եւ ա-
սէ, Ահա տեսանէի մեւս եւս այլ երազ,
որպէս թէ արեգակնդ եւ լուսին եւ մե-
տասան աստեղք երկիր պագանէին ինձ։
10 [2]Սաստեաց նմա հայրն իւր եւ ասէ,
Զինչ է երազն զոր տեսեր. արդ գալով
գայցեմք ես եւ մայր քո եւ եղբարք
11 քո եւ երկի՞ր պագանիցեմք քեզ։ Եւ նա-
խանձեցան ընդ նմա եղբարքն իւր.
բայց հայրն պահէր զբանսն։
12 Եւ գնացին եղբարքն նորա արածել
13 զխաշինս հօրն իւրեանց ի Սիւքեմ։ Եւ
ասէ Իսրայէլ ցՅովսէփ, Ո՞չ եւանիկ եղ-
բարք քո արածեն զխաշինսն ի Սիւքեմ. եկ
առաքեցից զքեզ առ նոսա։ Եւ ասէ ցնա,
14 Ահաւասիկ ես։ Ասէ ցնա Իսրայէլ, Երթ
տես եթէ ո՞ղջ իցեն եղբարքն քո եւ
խաշինք, եւ բեր ինձ զրոյց. եւ ա-
ռաքեաց զնա ի ծործորոյն Քեբրոնի.
15 եկն ի Սիւքեմ։ Եւ եգիտ զնա այր մի՝
մոլորեալ ի դաշտին. եհարց ցնա այրն
16 եւ ասէ, Զի՞նչ խնդրես։ Եւ նա ասէ,
Զեղբարսն իմ խնդրեմ. պատմեա ինձ
17 ո՞ւր արածիցեն։ Եւ ասէ ցնա այրն,
Բարձին աստի. եւ լուայ զի ասէին,
Երթիցուք ի Դովթայիմ։ Եւ գնաց Յով-
սէփ զհետ եղբարց իւրոց, եւ եգիտ
18 զնոսա ի Դովթայիմ։ Տեսին զնա [1]եղ-
բարքն յառաջագոյն՝ ի հեռաստանէ՝ մինչ-
չեւ մօտ եկեալ էր առ նոսա, խորհուրդ
19 վատ ի մէջ առին սպանանել զնա։ Եւ
ասեն իւրաքանչիւր ցեղբայր իւր, Ահա
20 երազատեսն գայ. Եկայք սպանցուք
զնա, եւ ընկեսցուք ի մի ի գբոց աստի,
եւ ասասցուք եթէ Գազան չար եկեր զնա,
եւ տեսցուք զինչ լինիցին երազքն նորա։
21 Իբրեւ լուաւ Ռուբէն, կորզեաց զնա
ի ձեռաց նոցա եւ ասէ, Մի հարցուք
22 զդա յոգի։ Եւ ասէ ցնոսա Ռուբէն, Մի
հեղցուք արիւն, այլ արկէք զդա ի գուբ
մի յանապատի աստ, եւ ձեռն մի ար-
կանէք ի նա. զի թափեսցէ զնա ի ձե-
ռաց նոցա, եւ հասուցանիցէ զնա առ
հայր իւր։
23 Եւ եղեւ իբրեւ եկն Յովսէփ առ եղ-
բարսն իւր, մերկացին զպատմուճանն
24 նորա ծաղկեայ ի նմանէ. Եւ առին ըն-
կեցին զնա ի գուբն. եւ գուբն ունայն
25 էր, եւ ջուր ոչ գոյր ի նմա։ Եւ նստան
ուտել հաց. զաչս ի վեր բարձեալ տե-
սին, եւ ահա ճանապարհորդք Իսմայե-
լացիք գային ի Գաղաադէ, եւ ուղտք
նոցա լի էին խնկովք, ստաշխամբ եւ
ռետնիւ, եւ երթային իջուցանել յԵ-
26 գիպտոս։ Եւ ասէ Յուդա ցեղբարսն
իւր, Զի՞նչ օգուտ է եթէ սպանանի-
ցեմք զեղբայրն մեր, եւ թաքուցանի-
27 ցեմք զարիւն նորա. Եկայք վաճառես-
ցուք զնա Իսմայելացւոցն, եւ ձեռք մեր
մի՛ չարչարեսցին ի նմա, զի եղբայր
եւ մարմին մեր է. եւ լուան նմա եղ-
28 բարքն իւր։ Եւ անցանէին արք Մա-
դիանացիք, վաճառականք, եւ ձգեցին
հանին զՅովսէփ ի գբոյ անտի, եւ վա-
ճառեցին զՅովսէփ Իսմայելացւոցն քսան
[3]դահեկանի. եւ իջուցին զՅովսէփ յԵ-
29 գիպտոս։ Դարձաւ Ռուբէն ի գուբն, եւ
ոչ եգիտ զՅովսէփ ի գբի անդ. պա-
30 տառեաց զհանդերձս իւր։ Դարձաւ առ
եղբարսն իւր եւ ասէ, Պատանեակն չէ
անդ. եւ ես արդ յո՞ երթայց։
31 Եւ առեալ զպատմուճանն Յովսեփայ՝
զենին ուլ այծեաց, եւ թաթաւեցին
32 զպատմուճանն յարեանն։ Եւ առաքեցին
զպատմուճանն ծաղկեայ տանել առ հայրն
իւրեանց, եւ ասեն, Զայդ գտաք. ծա-
նիր եթէ որդւոյ քո՞ իցէ պատմուճանդ
33 եւ եթէ ոչ։ Եւ ծանեաւ զնա եւ ասէ,
Պատմուճան որդւոյ իմոյ է. գազան
չար եկեր զնա, գազան յափշտակեաց
34 զՅովսէփ։ Եւ պատառեաց զհանդերձս
իւր, եւ քուրձ զգեցաւ ի վերայ միջոյ
իւրոյ. եւ սուգ ունէր ի վերայ որդւոյն
35 իւրոյ աւուրս բազումս։ Եւ ժողովեցան
ամենայն ուստերք նորա եւ ամենայն
դստերք նորա, եւ եկին մխիթարել զնա,
եւ ոչ կամէր մխիթարել. ասէ, Զի իջից
ես սգով առ որդի իմ ի դժոխս։
36 Եւ ելաց զնա հայրն իւր։ Իսկ Մադիա-
նացիքն վաճառեցին զՅովսէփ յԵգիպ-
տոս Պետափրեայ ներքինւոյ դահճապե-
տի Փարաւոնի։

ԳԼ. ԼԸ

1 Եւ եղեւ ի ժամանակի յայնմիկ էջ
Յուդա յեղբարց իւրոց, եւ չոգաւ առ
ոմն Ոդողոմացի որում անուն էր Իրաս։

---

[1] Յնբր. գոյնոյ [2] Նբր. Իբրեւ պատմեաց զայս հօր իւրում և եղբարց իւրոց, սաստեաց

[3] Նբր. արծաթոյ

2 Եւ ետես անդ Յուդա զդուստր առն
Քանանացւոյ, որում անուն էր Շաւա,
եւ առ զնա իւր կին, եւ եմուտ առ նա։
3 Եւ յղացաւ եւ ծնաւ որդի, եւ կոչեաց
4 զանուն նորա Էր։ Եւ յղացաւ դարձեալ
եւ ծնաւ որդի, եւ կոչեաց զանուն նո-
5 րա Աւնան։ Եւ յաւել դարձեալ ծնաւ
որդի, եւ կոչեաց զանուն նորա Սելովմ.
եւ նա էր ի Քասբի յորժամ ծնաւ [1]զնոսա։
6 Եւ առ Յուդա կին Էրայ անդրանկի
7 իւրում, որում անուն էր Թամար։ Եւ
եղեւ Էր անդրանիկն Յուդայ՝ չար ա-
ռաջի Տեառն, եւ սպան զնա [2]Աստուած։
8 Եւ ասէ Յուդա ցԱւնան, Մուտ առ
կին եղբօր քո, եւ ամուսնասջիր ընդ
նմա, եւ յարուսցես զաւակ եղբօր քում։
9 Իբրեւ գիտաց Աւնան թէ ոչ լինի նմա
զաւակն, լինէր յորժամ մտանէր առ
կին եղբօր իւրոյ, հեղոյր [3]զսերմն յեր-
10 կիր, չտալ զաւակ եղբօր իւրում։ Եւ
չար թուեցաւ առաջի [4]Աստուծոյ գործն
11 զոր արար, եւ սպան եւ զնա եւս։ Եւ
ասէ Յուդա ցԹամար նու իւր, Նիստ
այրի ի տան հօր քո՝ մինչեւ եղիցի մեծ
Սելովմ որդի իմ. զի ասէր թէ գուցէ
եւ նա եւս մեռանիցի որպէս եւ եղ-
բարքն նորա։ Գնաց Թամար եւ նստաւ
ի տան հօր իւրոյ։
12 Բազմացան աւուրքն, եւ մեռաւ
դուստրն Շաւայ, կին Յուդա. մխիթա-
րեցաւ Յուդա եւ գնաց ի կտուրս խա-
շանց իւրոց, ինքն եւ Իրաս [5]հովիւ իւր
13 Ոդողոմացի ի Թամնա։ Ազդ եղեւ Թա-
մարայ "նուոյ նորա" եւ ասեն, Ահա
սկեսրայր քո ելանէ ի Թամնա՝ կտրել
14 զխաշինս իւր։ Եւ եհան զհանդերձս
այրութեան իւրոյ յինքենէ, արկաւ թեռ
եւ զարդարեցաւ, եւ նստաւ առ դրան
Ենանու յանցս Թամնայ. զի ետես եթէ
մեծ եղեւ Սելովմ, եւ նա ոչ տայր զնա
15 նմա կին։ Իբրեւ ետես զնա Յուդա,
համարեցաւ թէ բոզ իցէ, քանզի ծած-
կեալ էր զերեսս իւր "եւ ոչ ծանեաւ
16 զնա"։ Խոտորեցաւ առ նա ի ճանապար-
հէ անտի եւ ասէ, Թոյլ տուր ինձ մտա-
նել առ քեզ. զի ոչ ծանեաւ թէ նուն
նորա իցէ։ Եւ նա ասէ, Զի՞նչ տացես
17 ինձ եթէ մտանիցես առ իս։ Եւ ասէ,
Ես տաց ածել քեզ ուլ այծեաց ի խա-
շանց իմոց. եւ նա ասէ թէ Տա՞ս գրա-
18 ւական մինչեւ տացես ածել։ Եւ նա
ասէ, Զի՞նչ գրաւական տաց քեզ. Եւ
ասէ, Զմատանիդ եւ [6]զգինդդ եւ զգա-
ւազանդ որ ի ձեռին [7]քում. եւ եմուտ
19 առ նա, եւ յղացաւ ի նմանէ։ Եւ յար-
եաւ գնաց, եւ եհան ի բաց զձորձն
իւր յինքենէ, եւ զգեցաւ զհանդերձն
20 այրութեան իւրոյ։ Եւ առաքեաց Յուդա
ուլ այծեաց ի ձեռն [8]հովուին իւրոյ Ո-
դողոմացւոյ առնուլ զգրաւականն ի կնո-
21 ջէ անտի. եւ ոչ եգիտ զնա։ Եհարց
զարս տեղւոյն եւ ասէ ցնոսա, Ո՞ւր է
բոզն որ էր յԵնան ի վերայ ճանապար-
հիս. եւ ասեն, Չէր աստ ուրեք բոզ։
22 Եւ դարձաւ առ Յուդա եւ ասէ, Ոչ
գտի, եւ արք տեղւոյն ասեն թէ Չիք
23 աստ բոզ։ Ասէ Յուդա, Նմա լիցի այն,
այլ զի մի՛ ծաղր կայցուք. ես ետու
24 տանել զուլդ, եւ դու ոչ գտեր։ Եւ ե-
ղեւ յետ երից ամսոց ազդ եղեւ Յու-
դայի եւ ասեն, Պոռնկեցաւ նու քո
Թամար, եւ ահա յղի է ի պոռնկութե-
նէ. եւ ասէ Յուդա, Հանէք զնա ար-
25 տաքս, եւ այրեսցի։ Եւ մինչդեռ տա-
նէին զնա, առաքեաց առ սկեսրայրն իւր
եւ ասէ, Յառնէ ույր այդ գրաւականք
են՝ յղի եմ ես. եւ ասէ, Ծանիր ո՞յր
իցէ մատանիդ եւ [9]զգինդդ եւ գաւա-
26 զանդ։ Ծանեաւ Յուդա եւ ասէ, Ար-
դարացեալ է նա քան զիս. զի ոչ ետու
զնա որդւոյ իմում Սելովմայ. եւ ոչ
եւս յաւել գիտել զնա։
27 Եւ եղեւ իբրեւ ծնանէր, եւ էին եր-
28 կու որդիք յորովայնի նորա։ Եւ եղեւ
ի ժամանակի ծննդեան նորա, մին յա-
ռաջագոյն եհան զձեռն իւր. եւ առ
ծնուցիչն՝ կապեաց կարմիր ի ձեռն նո-
29 րա, եւ ասէ, Նախ սա [10]ելեսցէ։ Իբրեւ
ամփոփեաց զձեռն անդրէն, եւ ել վաղ-
վաղակի եղբայր նորա. եւ նա ասէ,
Զի՞ է զի [11]խրամատեցաւ վասն քո
ցանկդ", եւ կոչեաց զանուն նորա [12]Փա-
30 րէս։ Եւ յետոյ ել եւ եղբայր նորա,
յորոյ ձեռին կապեալ էր զկարմիրն, եւ
կոչեաց զանուն նորա Զարա։

## ԳԼ. ԼԹ

1 Եւ զՅովսէփ իջուցին յԵգիպտոս, եւ

[1] Եբր. զնա [2] Եբր. Տէր [3] Եբր. [illegible] [4] Եբր. Տեառն [5] Եբր. բարեկամ

[6] Եբր. զժապաւէնդ [7] Եբր. քում. և ետ նմա [8] Եբր. բարեկամին [9] Եբր. ժապաւէնդ [10] Եբր. ել [11] Եբր. խրամատեցեր. եղիցի խրամատդ ի վերայ քո [12] Այսինքն, խրամատ

զնեաց զնա Պետափրէս ներքինի Փա-
րաւոնի, զահճապետ, այր Եգիպտացի,
ի ձեռաց Իսմայելացւոցն որք իջուցին
2 զնա անդր: Եւ էր Տէր ընդ Յովսեփայ,
եւ էր այր աջողակ, եւ եղեւ ի տան
3 տեառն իւրոյ [1]յԵգիպտոս: Իբրեւ" գիտաց
տէրն նորա թէ Տէր ընդ նմա է, եւ
զամենայն զինչ եւ առնէր՝ Տէր յաջողէր
4 ի ձեռս նորա: Եւ եգիտ Յովսէփ շնորհս
առաջի տեառն իւրոյ, զի հաճոյ էր նմա.
եւ կացոյց զնա ի վերայ տան իւրոյ, եւ
զամենայն ինչ որ իւր էր՝ ետ ի ձեռս Յով-
5 սեփայ: Եւ եղեւ յետ կացուցանելոյ
զնա ի վերայ տան իւրոյ եւ ի վերայ
ամենայն իրիք որ ինչ էր նորա, եւ
օրհնեաց Տէր զտուն Եգիպտացւոյն վասն
Յովսեփայ. եւ եղեւ օրհնութիւն Տեառն
ի վերայ ամենայն ընչից նորա ի տան եւ
6 յանդի: Եւ եթող զամենայն որ ինչ իւր
էր՝ ի ձեռս Յովսեփայ. եւ ոչ գիտէր
զամենայն որ ինչ կայր ի տան իւրում,
բայց միայն զհացն զոր ուտէր: Եւ էր
Յովսէփ աղնիւ երեսօք եւ գեղեցիկ
տեսլեամբ յոյժ:
7 Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ եւ արկ
կին տեառն իւրոյ զաչս իւր ի վերայ
Յովսեփայ, եւ ասէ ցնա, Քունեա ընդ
8 իս: Եւ նա ոչ կամեցաւ, եւ ասէ ցկին
տեառն իւրոյ, Զի եթէ տէր իմ ոչ ճա-
նաչէ ինչ ի տան իւրում [2]վասն իմ". եւ
9 զամենայն ինչ ետ ի ձեռս իմ. Եւ չիք
ինչ ի տան աստ որ մեծ է քան զիս.
եւ չիք ինչ զատեալ յինէն բայց ի քէն՝
զի կին նորա ես. եւ զիա՞րդ առնիցեմ
զբանդ զայդ զչար եւ զմեծ, եւ մե-
10 ղանչիցեմ առաջի Աստուծոյ: Եւ եղեւ
իբրեւ խօսէր ընդ Յովսեփայ օր ըստ
օրէ, եւ ոչ անսայր քունել ընդ նմա,
11 եւ ոչ հաւել լինել: Եւ եղեւ օր ինչ այն-
պիսի, մտեալ Յովսէփ ի տունն գործել
զգործ ինչ իւր. եւ ոչ ոք էր անդ յըն-
12 տանեաց անտի ի ներքս: Բուռն եհար
զձորձոց նորա եւ ասէ, Ննջեա ընդ իս:
Եւ նորա թողեալ զձորձս իւր ի ձեռս
նորա, եւ փախեաւ եւ ել արտաքս:
13 Եւ եղեւ իբրեւ ետես եթէ եթող զձորձս
իւր ի ձեռս նորա եւ փախեաւ ել ար-
14 տաքս, Կոչեաց զընտանիս տանն եւ ասէ,
Տեսէք զի ած մեզ ծառայ Եբրայեցի խաղ
առնել զմեզ. եմուտ առ իս եւ ասէ,
Ննջեա ընդ իս. եւ ես աղաղակեցի ի
15 ձայն բարձր. Եւ իբրեւ լուաւ թէ մե-
ծաբարբառ աղաղակեցի, եթող զձորձս
իւր առ իս եւ փախեաւ ել արտաքս:
16 Եւ եդ զձորձսն առ իւր՝ մինչեւ եկն
17 տէրն ի տուն իւր: Եւ խօսեցաւ ընդ
նմա ըստ բանիցս այսոցիկ, եւ ասէ,
Եմուտ առ իս ծառայդ Եբրայեցի զոր
ածեր մեզ՝ խաղ առնել զիս. [3]եւ ասէ
18 ցիս՝ Քունեա ընդ իս:" Իսկ իբրեւ լուաւ
թէ բարձրացուցի զբարբառ իմ եւ ա-
ղաղակեցի, եթող զձորձս իւր յիս եւ
փախեաւ ել արտաքս:
19 Եւ եղեւ իբրեւ լուաւ տէրն նորա
զբանս կնոջն իւրոյ զոր խօսեցաւ ընդ
նմա եւ ասէ, թէ Այսպէս արար ընդ
իս ծառայն քո, բարկացաւ սրտմտու-
20 թեամբ: Եւ առ տէրն Յովսեփայ, արկ
զնա ի բանտ, ի տեղի ուր կալանաւորքն
արքունի կապեալ [4]կային ի բանտին:
21 Եւ էր Տէր ընդ Յովսեփայ, եւ արկ
զնովաւ ողորմութիւն, եւ ետ նմա շնորհս
22 առաջի բանտապետին: Եւ ետ բանտա-
պետն [3]զբանտն ի ձեռս Յովսեփայ, [3]եւ
զամենայն կալանաւորսն որ էին ի բան-
տի անդ. եւ զամենայն որ ինչ գործէին
23 անդ, նա էր որ գործէր: Եւ ոչ ինչ գի-
տէր բանտապետն զբանտին վասն նորա,
զի ամենայն ի ձեռս Յովսեփայ էր. քան-
զի Տէր էր ընդ նմա, եւ զոր ինչ գոր-
ծէր նա՝ Տէր յաջողէր ի ձեռս նորա:

## Գլ. Խ

1 Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ, յան-
ցեաւ տակառապետ արքային Եգիպտա-
ցւոց, եւ մատակարար տեառն նոցա
2 արքային Եգիպտացւոց: Եւ բարկացաւ
Փարաւոն ի վերայ երկոցունց ներքի-
նացն իւրոց, ի վերայ տակառապետին
3 եւ ի վերայ մատակարարին. Եւ եդ
զնոսա ի բանտի առ զահճապետին, յայնմ
բանտի ի տեղւոջ ուր Յովսէփն կայր:
4 Եւ յանձն արար զնոսա զահճապետն
Յովսեփայ, եւ կայր նոցա ի սպասու.
եւ էին աւուրս ինչ ի բանտի անդ:
5 Եւ տեսին երազ երկոքին, գիւրաքան-
չիւր երազ ի միում գիշերի, [5]տեսիլ ե-
րազոյ տակառապետին եւ մատակարա-
րին" որ էին արքային Եգիպտացւոց,

[1] Եբր. Եգիպտացւոյ: (3) Եւ [2] Եբր. ընդ իս

[3] Յեբր. պոլոսե [4] Եբր. կային. և մնաց անդ
[5] Եբր. իւրաքանչիւր ըստ մեկնութեան երազոյ իւրոյ, տակառապետն և մատակարարն

6 մինչ էին ի բանտի անդ։ Եմուտ առ նոսա
Յովսէփ ընդ առաւօտն, եւ ետես զնոսա,
7 եւ էին խռովեալք։ Եհարց ցներքինիսն
Փարաւոնի որ էին ընդ նմա ի բանտի անդ
առ տեառն նորա եւ ասէ, Ընդէ՞ր տրտում
8 են երեսք ձեր այսօր։ Եւ նոքա ասեն
ցնա, Երազ տեսաք, եւ ոչ ոք է որ
մեկնիցէ զնա. եւ ասէ ցնոսա Յովսէփ,
Ո՞չ ապաքէն ի ձեռս Աստուծոյ իցէ մեկ-
նութիւն նոցա. պատմեցէք ինձ։
9 Եւ պատմեաց տակառապետն զերազն
իւր Յովսեփայ եւ ասէ, Թուէր ինձ ի
տեսլեան իմում որթ մի առաջի իմ.
10 Եւ յորթն երեք [1]ուռք կանաչք յոյժ.
եւ ունէր երիս ողկոյզս հասեալ, ողկոյզ
11 խաղողոյ". Եւ բաժակն Փարաւոնի ի
ձեռին իմում. առնուի զխաղողն եւ ճմլէի
ի բաժակն Փարաւոնի, եւ տայի զբա-
12 ժակն ի ձեռս Փարաւոնի։ Եւ ասէ ցնա
Յովսէփ, Այս է մեկնութիւն նորա. երեք
13 ուռքն՝ երեք աւուրք են. Այլ եւս երեք
աւուրք, [2]եւ յիշեսցէ Փարաւոն զիշխա-
նութիւնն քո, եւ անդէն ի նմին տակա-
ռապետութեան քում կացուսցէ զքեզ".
եւ տացես զբաժակն Փարաւոնի ի ձեռս
նորա, ըստ առաջնոյ [3]իշխանութեանն
քո" որպէս եւ էիրն տակառապետ[4]։
14 Այլ զիս յիշեսջիր յորժամ բարի լինիցի
քեզ, եւ արասցես ինձ ողորմութիւն.
եւ յիշեսցես զիս առաջի Փարաւոնի,
եւ հանցես զիս ի բանտէ աստի յայս-
15 մանէ. Զի գողանալով գողացան զիս
յերկրէն Եբրայեցւոց. եւ աստ ինչ ոչ արա-
րի, եւ արկին զիս ի տուն գբոյս այսորիկ։
16 Իբրեւ ետես մատակարարն եթէ [5]ու-
ղիղ մեկնեաց, ասէ ցՅովսէփ, Եւ ես
տեսանէի յերազի, եւ թուէր ինձ թէ
երիս խանս [6]նաշհոյ ունէի ի գլուխ իմ.
17 Եւ ի վերնում խանին յամենայնէ զոր
ուտէր արքայ Փարաւոն՝ գործ մատա-
կարարաց. եւ թռչունք ուտէին զնա ի
խանէ անտի որ էր ի վերայ գլխոյ իմոյ։
18 Պատասխանի ետ Յովսէփ եւ ասէ ցնա,
Այս է մեկնութիւն նորա. երեք խանքն՝
19 երեք աւուրք են. Յետ երից աւուրց
բարձցէ Փարաւոն զգլուխ քո ի քէն, եւ
կախեսցէ զքեզ զփայտէ. եւ կերիցեն
թռչունք երկնից զմարմինս քո ի քէն։
20 Եւ եղեւ յաւուրն երրորդի, օր ծննդոց
էր Փարաւոնի, եւ առնէր ուրախութիւն
ամենայն ծառայից իւրոց. եւ [7]յիշեաց
զիշխանութիւն" տակառապետին եւ [8]զիշ-
խանութիւն մատակարարին ի մէջ ծա-
21 ռայից իւրոց։ Եւ կացոյց զտակառա-
պետն անդէն [9]յիշխանութեան իւրում,
եւ ետ զբաժակն ի ձեռն Փարաւոնի։
22 Եւ զմատակարարն կախեաց զփայտէ,
որպէս մեկնեացն Յովսէփ։
23 Եւ ոչ յիշեաց տակառապետն զՅով-
սէփ, այլ մոռացաւ զնա։

Գլ. ԽԱ

1 Եւ եղեւ յետ երկուց ամաց աւուրց
ետես Փարաւոն երազ. թուէր թէ կայցէ
2 առ եզեր գետոյ։ Եւ ահա որպէս թէ ի
գետոյ անտի ելանէին եւթն երինջք գե-
ղեցիկ տեսանելով եւ ընտիրք մարմնով,
3 եւ արածէին ի խաղի անդ։ Եւ ահա այլ
եւս եւթն երինջք ելանէին յետ նոցա ի
գետոյ անտի, գաղիրք տեսլեամբ եւ
փոքրք մարմնովք, եւ արածէին առ այլ
4 երինջովքն առ եզերբ գետոյն. Եւ ուտէին
եւթն երինջքն զազիրք տեսլեամբ եւ
փոքրք մարմնովք զեւթն երինջսն գե-
ղեցիկս տեսլեամբ եւ զընտիրս։ Զարթ-
5 եաւ Փարաւոն։ Եւ անդրէն ի քուն եմուտ,
եւ ետես երազ երկրորդ. եւ ահա եւթն
հասկ ելանէին ի միում փնջի ընտիրք
6 եւ գեղեցիկք։ Եւ ահա եւթն այլ հասկք
ոսինք եւ խորշակահարք ելանէին յետ
7 նոցա. Եւ կլանէին եւթն հասկքն ոսինք [10]եւ
խորշակահարք" զեւթն հասկսն զընտիրս
եւ զատոքս։ Զարթեաւ Փարաւոն, եւ
8 էր երազ։ Եւ եղեւ առաւօտ, եւ խռո-
վեցաւ անձն նորա, եւ առաքեաց կոչ-
եաց զամենայն երազահանսն Եգիպտոսի
եւ զամենայն իմաստունս նորա. եւ
պատմեաց Փարաւոն զերազն իւր, եւ
ոչ ոք էր որ մեկնէր զերազն Փարաւոնի։
9 Եւ խօսեցաւ տակառապետն առաջի
Փարաւոնի եւ ասէ, Զյանցանս իմ [11]յիշե-
10 ցուցանեմ այսօր։ Բարկացաւ Փարաւոն
ծառայից իւրոց, եւ եդ զմեզ ի բանտի
ի տան դահճապետին, զիս եւ զմատակա-

---

[1] Եբր. ուռք. և ընդ բողբոջելն ել ի վեր ծաղիկ նորա. հասուցին ողկոյզք նորա խաղողս [2] Եբր. բարձրացուսցէ Փարաւոն զգլուխ քո, և դարձուսցէ զքեզ ի բարձ քո [3] Եբր. օրինակին [4] Եբր. [illegible] նորա [5] Եբր. բարւոք [6] Եբր. գերմակ հացի

[7] Եբր. բարձրացոյց զգլուխ [8] Եբր. զգլուխ [9] Եբր. ի մատռուակութեան [10] Եբր. [illegible] [11] Եբր. յիշեմ

11 բարն. Եւ տեսաք երկոքին երազ ի
միում գիշերի, ես եւ նա. իւրաքանչիւր
12 [1]ըստ երազոյ իւրում" տեսանէաք: Եւ
էր անդ ընդ մեզ պատանի մի մանուկ
Եբրայեցի, ծառայ դահճապետին, եւ
պատմեցաք նմա, եւ մեկնեաց մեզ զե-
րազն մեր, առն ըստ իւրաքանչիւր
13 երազոյ մեկնեաց: Եւ եղեւ որպէս մեկ-
նեացն մեզ՝ նոյնպէս եւ պատահեաց.
[2]ինձ գալ հասանել յիշխանութիւն, եւ
նմա կախել զփայտէ":
14 Առաքեաց Փարաւոն եւ կոչեաց զՅով-
սէփ. եւ հանին զնա ի բանտէ անտի,
եւ [3]փոքրեցին զհերս նորա, եւ փոխեցին
զպատմուճան նորա", եւ եկն առաջի
15 Փարաւոնի: Եւ ասէ Փարաւոն ցՅովսէփ,
Երազ տեսի, եւ չիք ոք որ մեկնէ զնա.
բայց ես լուայ զքէն, ասեն, եթէ լսես
16 զերազս, մեկնես: Պատասխանի ետ Յով-
սէփ եւ ասէ ցՓարաւոն, [4]Առանց Աստու-
ծոյ ոչ լինիցի պատասխանի փրկութեան"
Փարաւոնի:
17 Խօսեցաւ Փարաւոն ընդ Յովսեփայ եւ
ասէ, Թուէր ի տեսլեան իմում, եթէ
18 կայի առ եզեր գետոյ. Եւ որպէս թէ
ի գետոյ անտի ելանէին եւթն երինջք
ընտիրք մարմնովք եւ գեղեցիկք տեսա-
19 նելով, եւ արածէին ի խաղի անդ: Եւ
ահա այլ եւս եւթն երինջք ելանէին զկնի
նոցա [5]ի գետոյ անտի", ժանգք եւ զազիրք
տեսանելով յոյժ եւ վտիտք մարմնովք,
որպիսի ոչ տեսի յամենայն երկրին Եգիպ-
20 տացւոց զազրագոյնս քան զնոսա: Եւ
ուտէին եւթն երինջքն վտիտք եւ զազիրք
զեւթն երինջսն զառաջինսն՝ [5]զգեղեցիկսն
21 եւ" զընտիրս. Եւ մտանէին յորովայնս
նոցա եւ [6]ոչ երեւէին". եւ երեսք նոցա
զազիրք իբրեւ զառաջինն: [7]Զարթեայ
22 եւ դարձեալ ննջեցի": Եւ տեսանէի
միւսանգամ յերազի, որպէս թէ եւթն
հասկք ելանէին ի միում վնջի լիք եւ
23 գեղեցիկք. Եւ այլ եւս եւթն հասկք
ապականեալք, աղաղունք եւ խորշա-
24 կահարք ելանէին [8]մօտ առ նոսա". Եւ
կլանէին եւթն հասկքն աղաղունք [5]եւ
խորշակահարք" զեւթն հասկսն զգեղե-
ցիկս [5]եւ զատոքս": Եւ պատմեցի երա-
զահանացն, եւ ոչ ոք էր որ մեկնէր ինձ:
25 Եւ ասէ Յովսէփ ցՓարաւոն, Երազն
Փարաւոնի մի է. զոր ինչ Աստուած
26 առնելոց է՝ եցոյց Փարաւոնի: Եւթն
երինջքն գեղեցիկք՝ եւթն ամ են, եւ
եւթն հասկքն գեղեցիկք՝ եւթն ամ են.
27 երազն Փարաւոնի մի է: Եւ եւթն երինջքն
տգեղք եւ վտիտք որ ելանէին զհետ
նոցա՝ եւթն ամ են, եւ եւթն հասկքն
ոսինք եւ խորշակահարք՝ [9]լիցի զեւթն
28 ամ սով": Բանն զոր ասացի Փարաւոնի՝
այն է, զոր ինչ Աստուած առնելոց է՝
29 եցոյց Փարաւոնի: Ահա ամք եւթն եկես-
ցեն բազում լիութեան յամենայն երկ-
30 րիս Եգիպտացւոց. Եւ յետ այնորիկ եկես-
ցէ եւթն ամ սովոյ, եւ մոռասցին զլիու-
թիւնն յամենայն երկրիս Եգիպտացւոց.
31 եւ սպառեսցէ սովն զերկիր. Եւ ոչ ծանի-
ցի [10]լիութիւնն յերեսաց սովոյն որ գայցէ
յետ այնորիկ. քանզի սաստիկ լինիցի
32 յոյժ: Այլ վասն կրկնելոյ երազոյն Փարա-
ւոնի երկիցս անգամ, զի ճշմարիտ իցէ
բանն առ ի յԱստուծոյ, եւ փութասցի
33 Աստուած առնել զնա: Եւ արդ տես,
խնդրեա այր մի իմաստուն եւ խորհրդա-
կան Փարաւոնի, եւ կացուսցես զնա ի
34 վերայ երկրիս Եգիպտացւոց: Եւ արասցէ,
եւ կացուսցէ գործակալս Փարաւոնի ի
վերայ երկրիս, եւ հնգերորդեսցեն զար-
մտիս երկրիս Եգիպտացւոց զեւթն ա-
35 մացն լիութեան: Եւ ժողովեսցեն զա-
մենայն կերակուրս [5]զեւթն ամացն բար-
եաց եկելոց, եւ ժողովեսցի ցորեանն
ընդ ձեռամբ Փարաւոնի, եւ կերակուրք
36 ի քաղաքս պահեսցին: Եւ եղիցին կե-
րակուրքն պահեալ երկրիս յեւթն ամ
սովոյն որ լինիցին յերկրիս Եգիպտաց-
ւոց, եւ մի՛ սատակեսցի երկիրս ի սովոյ:
37 Եւ հաճոյ թուեցաւ բանն առաջի Փա-
րաւոնի եւ առաջի ամենայն ծառայից
38 իւրոց: Եւ ասէ Փարաւոն ցամենայն
ծառայս իւր, Միթէ գտանիցե՞մք այր
այնպիսի որ ունիցի զոգի Աստուծոյ
39 յանձին իւրում: Եւ ասէ Փարաւոն
ցՅովսէփ, Որովհետեւ եցոյց քեզ Աս-
տուած զայդ ամենայն, չիք այր իմաստ-
40 նագոյն եւ խորհրդական քան զքեզ: Դու

[1]Եբր. ըստ մեկնութեան երազոյ իւրոյ [2]Եբր. դարձոյց զիս յիմ բարձ, և զնա կախեաց [3]Եբր. փոքրեաց զհերս իւր, և փոխեաց զպատմուճան իւր [4]Եբր. Ոչ ես. Աստուած տացէ պատասխանի ի խաղաղութիւն [5]ՅԵբր. պակաս [6]Եբր. ոչ գիտացաւ թէ մտեալ էին յորովայն նոցա [7]Եբր. Եւ զարթեայ [8]Եբր. յետ նոցա

[9]Եբր. լիցին եւթն ամք սովոյ [10]Եբր. լիութիւնն յերկրին

լիցիս ի վերայ տան իմոյ, եւ բերանոյ
քում հնազանդ լիցի ամենայն ժողո-
վուրդ իմ. բայց միայն աթոռովս ի վե-
41 րոյ եղէց ես քան զքեզ։ Եւ ասէ Փա-
րաւոն ցՅովսէփ, Ահաւասիկ կացուցի
զքեզ այսօր ի վերայ երկրիս Եգիպտաց-
42 ւոց։ Եւ հանեալ Փարաւոնի զմատա-
նին իւր ի ձեռանէ իւրմէ՝ եդ ի ձե-
ռին Յովսեփայ, եւ զգեցոյց նմա պատ-
մուճան բեհեզեայ, եւ արկ մանեակ ոս-
43 կի ի պարանոց նորա։ Եւ եհան զնա
յերկրորդ կառս իւր. եւ քարոզ կարդայր
առաջի [1]նորա. եւ կացոյց զնա ի վերայ
44 երկրին Եգիպտացւոց։ Եւ ասէ Փարաւոն
ցՅովսէփ, Ահաւասիկ ես Փարաւոն,
առանց քո ոչ ոք համբարձցէ զձեռս
իւր եւ զոտս իւր ի վերայ ամենայն երկ-
45 րիս Եգիպտացւոց։ Եւ կոչեաց Փարաւոն
զանուն Յովսեփայ [2]Փսոմփթոմփանէ,
եւ ետ նմա զԱսանէթ զդուստր Պետափ-
րեայ քրմի Արեգ քաղաքի կնութեան.
եւ ել Յովսէփ [3]յերեսաց Փարաւոնի"։
46 Եւ էր Յովսէփ ամաց երեսնից՝ յոր-
ժամ ընծայեցաւ առաջի Փարաւոնի ար-
քային Եգիպտացւոց։ Ել Յովսէփ յերե-
սաց Փարաւոնի, եւ շրջեցաւ ընդ ամե-
47 նայն Եգիպտոս։ Եւ արար երկիրն յեւթն
48 ամս լիութեանն արդիւնս։ Եւ ժողով-
եաց զամենայն կերակուրս ամացն եւ-
թանց, [4]յորս էր լիութիւն" յերկրին Ե-
գիպտացւոց. եւ համբարեաց կերակուրս
ի քաղաքս, զկերակուրս դաշտաց քա-
ղաքին որ շուրջ զնովաւ, համբարեաց
49 ի նմա։ Եւ ժողովեաց Յովսէփ ցորեան
իբրեւ զաւազ ծովու բազում յոյժ, մինչեւ
ոչ կարէր համարել, քանզի ոչ գոյր թիւ։
50 Եւ եղեն Յովսեփու երկու որդիք՝
մինչչեւ եկեալ էր եւթն ամացն սովոյ,
զորս ծնաւ նմա Ասանէթ դուստր Պե-
51 տափրեայ քրմի Արեգ քաղաքի։ Եւ
կոչեաց Յովսէփ զանուն անդրանկանն
[5]Մանասէ. զի ասէ՝ թէ Մոռացոյց ինձ
Աստուած զամենայն վիշտս իմ, եւ զա-
52 մենայն [6]վիշտս հօր իմոյ։ Եւ զանուն
երկրորդին կոչեաց [7]Եփրեմ, զի ասէ՝ թէ
Աճեցոյց զիս Աստուած յերկրի տառա-
պանաց իմոց։
53 Եւ անցին եւթն ամք լիութեանն որ
54 եղեն յերկրին Եգիպտացւոց։ Եւ սկսան
գալ եւթն ամք սովոյն, որպէս եւ ա-
սաց Յովսէփ. եւ եղեւ սով [8]յամենայն
երկրին, զի" յամենայն երկրին Եգիպ-
55 տացւոց [9]ոչ գտանէր հաց։ Եւ սովեցաւ
ամենայն երկիրն Եգիպտացւոց, եւ ա-
ղաղակեաց [9]ամենայն ժողովուրդն առ
Փարաւոն վասն հացի. եւ ասէ Փարա-
ւոն յամենայն Եգիպտացիսն, Երթայք
առ Յովսէփ, եւ զոր ինչ ասիցէ ձեզ՝ ա-
56 րասջիք։ Եւ էր սով ի վերայ երեսաց ա-
մենայն երկրի. եւ եբաց Յովսէփ զամե-
նայն շտեմարանս ցորենոյ, եւ վաճառէր
ամենայն Եգիպտացւոցն. եւ սաստկացաւ
սովն [10]յամենայն երկրին" Եգիպտացւոց։
57 Եւ ամենայն աշխարհք գային յԵգիպտոս
գնել ի Յովսեփայ, զի զօրանայր սովն
ընդ ամենայն երկիր։

Գ Լ. ԽԲ

1 Եւ տեսեալ Յակոբ եթէ գոյ [11]վաճառ յեր-
կրին Եգիպտացւոց, ասէ Յակոբ ցորդիսն
2 իւր, Ընդէ՞ր հեղգայք. Ահա լուեալ եթէ
գոյ ցորեան յԵգիպտոս. իջէք անդր եւ
գնեցէք մեզ սակաւ մի կերակուր, զի
3 կեցցուք եւ մի՛ մեռցուք։ Եւ իջին եղ-
բարքն Յովսեփայ տասնեքին՝ գնել ցոր-
4 եան յԵգիպտոսէ։ Եւ զԲենիամին զեղ-
բայրն Յովսեփայ ոչ արձակեաց Յակոբ
ընդ եղբարսն. քանզի ասէր թէ Գուցէ
պատահիցէ նմա [12]հիւանդութիւն։
5 Եւ եկին որդիքն Իսրայելի գնել ընդ
այլ երթեւեկսն. քանզի էր սով յերկրին
6 Քանանացւոց։ Եւ Յովսէփ էր իշխան
երկրին, եւ նա վաճառէր ամենայն ժողո-
վրդեան երկրին. եւ եկեալ եղբարքն
Յովսեփայ երկիր պագանէին ի վերայ ե-
7 րեսաց իւրեանց յերկիր։ Եւ իբրեւ ետես
Յովսէփ զեղբարսն իւր, ծանեաւ. եւ
օտարանայր ի նոցանէ, եւ խօսեցաւ ընդ
նոսա խստագոյնս, եւ ասէ, Ուստի՞ գայք.
եւ նոքա ասեն, Յերկրէն Քանանացւոց՝
8 գնել կերակուրս։ Ծանեաւ Յովսէփ զեղ-
բարսն իւր, եւ նոքա ոչ ծանեան զնա։
9 Եւ յիշեաց Յովսէփ զերազսն իւր զոր ե-
տես, եւ ասէ ցնոսա, Լրտեսք էք դուք,
եւ գիտել [13]զեղ եւ զմուտ" աշխարհիս եկ-
10 եալ էք։ Եւ նոքա ասեն, Ոչ, տէր, ծա-

[1]Եբր. նորա. Դիր ծունր [2]Այսինքն, փրկիչ երկրին [3]Եբր. ընդ երկիրն Եգիպտացւոց [4]Եբր. որ եղեն [5]Այսինքն, մոռացուցիչ [6]Եբր. տուն [7]Այսինքն, պտղաբեր

[8]Եբր. յամենայն երկիրս, այլ [9]Յ Եբր. [illegible] [10]Եբր. յերկրին [11]Եբր. ցորեան [12]Եբր. վտանգ [13]Եբր. զմերկութիւն

ռայք քո եկեալ եմք գնել կերակուրս։
11 Ամենեքին մեք եմք որդիք առն միոյ.
արք խաղաղութեան եմք, եւ չեն ծա-
12 ռայք քո լրտեսք։ Ասէ ցնոսա, Ոչ, այլ
[1]զեղ եւ զմուտ՝՝ երկրիս եկեալ էք տե-
13 սանել։ Եւ նոքա ասեն, Երկոտասան եղ-
բարք եմք ծառայք քո, որդիք առն միոյ,
յերկրին Քանանացւոց. եւ կրտսերն առ
հօր իւրում է այսօր, եւ միւսն չէ ի միջի։
14 Ասէ ցնոսա Յովսէփ, Այդ իսկ է զոր ա-
15 սացի ձեզ, թէ լրտեսք էք. Եւ դովին
յայտ արարէք. երդուեալ յարեւն Փա-
րաւոնի, ոչ ելանէք աստի, եթէ ոչ ե-
16 կեսցէ եղբայրն ձեր կրտսեր այսր։ Արդ
առաքեցէք զմի ոք ի ձէնջ եւ ածցէ
զեղբայրն ձեր, եւ դուք կացէք ի պի-
ռահոջ, մինչեւ յայտնի լինիցին բանք
ձեր եթէ արդար խօսիցիք եւ թէ ոչ. ապա
թէ ոչ, երդուեալ յարեւն Փարաւոնի՝
17 թէ ոչ լրտեսք էք դուք։ Եւ եդ զնոսա
ի բանտի զերիս աւուրս։
18 Եւ ասէ ցնոսա Յովսէփ յաւուրն եր-
րորդի, Զայս արարէք եւ ապրիք. զի
19 եւ ես յԱստուծոյ երկիւղած եմ։ Եթէ
արք խաղաղութեան էք, եղբայր մի ի
ձէնջ աստ մնասցէ ի բանտի, եւ դուք
20 տարայք զվաճառ ցորենոյդ [2]ձերոյ. Եւ
զեղբայրն ձեր կրտսեր ածէք առ իս, եւ
հաւատարիմ լինիցին բանք ձեր. [3]ապա
21 թէ ոչ, մեռանիք։ Արարին՝՝ այնպէս։ Եւ
ասեն իւրաքանչիւր ցեղբայր իւր, Այո,
քանզի ի մեղս եմք վասն եղբօրն մե-
րոյ. զի արհամարհեցաք զնեղութիւն
ոգւոյ նորա յորժամ աղաչէրն զմեզ, եւ
ոչ լուաք նմա. վասն այնորիկ եկն ի վե-
22 րայ մեր այս նեղութիւն։ Պատասխանի
ետ Ռուբէն եւ ասէ ցնոսա, Ո՞չ խօսե-
ցայ ընդ ձեզ եւ ասեմ, թէ Մի՛ մեղան-
չէք մանկանդ. եւ ոչ լուարուք ինձ. եւ
23 ահա արիւն նորա խնդրի։ Եւ նոքա ոչ
գիտէին թէ լսէր Յովսէփ, զի թարգման
24 կայր ի միջի։ Եւ անցեալ մեկուսի ի
նոցանէ՝ ելաց Յովսէփ. եւ եկն միւսան-
գամ առ նոսա, եւ խօսեցաւ ընդ նոսա.
եւ առ ի նոցանէ զՇմաւոն եւ կապեաց
առաջի նոցա։
25 Եւ ետ հրաման Յովսէփ լնուլ զա-
մանս նոցա ցորենով, եւ դնել զարծաթն
իւրաքանչիւր ի քրձի իւրում, եւ տալ
նոցա պաշար ի ճանապարհ։ Եւ եղեւ
26 նոցա այնպէս։ Եւ նոցա բարձեալ [4]իւ-
27 րաքանչիւր իշոյ՝՝ գնացին անտի։ Եւ
լուծեալ միոյ զքուրձ իւր տալ կերա-
կուր գրաստու իւրում յիջաւանին, ետես
զծրար արծաթոյն իւրոյ զի կայր ի բերան
28 քրձի իւրոյ։ Ասէ ցեղբարս իւր, Դարձու-
ցաւ ինձ այսրէն արծաթն, եւ ահա աստէն
կայ ի քրձի իմում. եւ զարմացան միտք
նոցա, խռովեցան ընդ միմեանս եւ ասեն,
Զի՞նչ է այս զոր արար ընդ մեզ Աստուած։
29 Եւ եկին առ Յակոբ հայրն իւրեանց
յերկիրն Քանանու, եւ պատմեցին նմա
զամենայն ինչ որ անց ընդ նոսա, եւ ա-
30 սեն, Խօսեցաւ այրն, տէր երկրին, ընդ
մեզ խստագոյնս, եւ [5]եդ զմեզ ի բան-
31 տի՝՝ իբրեւ լրտեսս երկրին։ Եւ ասեմք
ցնա, Արք խաղաղութեան եմք, եւ չեմք
32 լրտեսք. Երկոտասան եղբարք եմք որ-
դիք հօր միոյ. մին չէ ի միջի, եւ
կրտսերն այժմ ընդ հօր մերում է յեր-
33 կրին Քանանացւոց։ Ասէ ցմեզ այրն,
տէր երկրին, Այսու գիտացից թէ արք
խաղաղութեան էք, եթէ զեղբայր մի ձեր
աստ առ իս թողուցուք, եւ զվաճառս
ցորենոյդ ի տունս ձեր առեալ տանիցիք,
34 Եւ զեղբայրն ձեր կրտսեր ածիցէք առ
իս, եւ գիտացից եթէ չէք լրտեսք, այլ
արք խաղաղութեան էք. եւ զայս եւս
եղբայր տաց ցձեզ, եւ յերկրի աստ առ-
35 նիցէք վաճառ։ Եւ եղեւ ի թափելն նոցա
զքուրձս իւրեանց, եւ կայր իւրաքան-
չիւր ուրուք ծրար արծաթոյ ի քրձի
իւրեանց. եւ իբրեւ տեսին զծրարս ար-
ծաթոյ իւրեանց, ինքեանք եւ հայր իւ-
36 րեանց, երկեան յոյժ։ Եւ ասէ ցնոսա
Յակոբ հայրն իւրեանց, Զիս անորդի ա-
րարէք. Յովսէփ չէ ի միջի, Շմաւոն չէ
ի միջի, եւ զԲենիամին եւս առնուցուք.
37 յիս վերայ եկն այս ամենայն։ Խօսեցաւ
Ռուբէն ընդ հօր իւրում եւ ասէ, Զեր-
կոսին զորդիս իմ սպանջիր, եթէ ոչ ածից
զդա առ քեզ. տուր զդա յիմ ձեռս, եւ ես
38 ածից զդա առ քեզ։ Եւ նա ասէ, Ոչ ի-
ջանէ որդի իմ ընդ ձեզ. զի եղբայր սորա
մեռաւ, եւ սա միայն մնացեալ է. եւ դէպ
լինիցի սմա [6]հիւանդանալ ի ճանապարհին
զոր երթայցէք, եւ իջուցանիցէք [7]զծե-
րութիւնս իմ տրտմութեամբ ի դժոխս։

[1]Եբր. զմերկութիւն [2]Եբր. ձերոյ վասն սովոյ տանց ձերոց [3]Եբր. և մի՛ մեռանիցիք։ Եւ արարին

[4]Եբր. զցորեան իւրեանց ի վերայ իշոց իւրեանց [5]Եբր. համարեցաւ զմեզ [6]Եբր. վտանգ [7]Եբր. զալիս

## Գլ. ԽԳ

1 Եւ սովն եւս քան զեւս սաստկանայր
2 ի վերայ երկրին։ Եւ եղեւ իբրեւ սպա-
ռեցին ուտել զցորեանն զոր բերին յերկ-
րէն Եգիպտացւոց, ասէ ցնոսա հայրն
իւրեանց, Դարձեալ երթայք գնեցէք
3 սակաւ մի կերակուր։ Խօսեցաւ ընդ
նմա Յուդա եւ ասէ, Վկայութեամբ եդ
ընդ մեզ վկայութիւն այրն եւ ասէ,
Մի՛ տեսանիցէք զերեսս իմ, եթէ ոչ եղ-
4 բայրն ձեր կրտսեր ընդ ձեզ իցէ։ Արդ
եթէ արձակես զեղբայրդ մեր ընդ մեզ,
5 իջցուք եւ [1]գնեսցուք կերակուրս. Ապա
թէ ոչ արձակես [2]զեղբայրդ մեր ընդ մեզ",
ոչ երթիցուք. զի այրն խօսեցաւ ընդ
մեզ եւ ասէ, Մի՛ տեսանիցէք զերեսս
իմ, եթէ ոչ եղբայրն ձեր կրտսեր ընդ
6 ձեզ իցէ։ Եւ ասէ Իսրայէլ, Զի՞նչ չա-
րիս հասուցէք ի վերայ իմ, զի պատ-
մեցէք առն թէ գոյցէ ձեր եղբայր։
7 Եւ նոքա ասեն, Հարցանելով եհարց
զմեզ այրն, եւ զազգէ մերմէ, եւ թէ
Տակաւին կենդանի՞ իցէ հայրն ձեր, եւ
եթէ իցէ՞ ձեր եղբայր. եւ պատմեցաք նմա
ըստ հարցանելոյն նորա. միթէ գիտէա՞ք
թէ ասելոց է ցմեզ՝ Ածէք զեղբայրն
8 ձեր։ Ասէ Յուդա ցԻսրայէլ հայրն իւր,
Արձակեա ընդ իս զպատանեակդ, եւ
յարուցեալ գնասցուք, զի կեցցուք եւ
մի՛ մեռցուք, եւ մեք եւ դու եւ [3]աստաց-
9 ուածք մեր։ Ես առնում զդա յիրաւխի.
ի ձեռաց իմոց խնդրեսջիր զդա. եթէ
ոչ ածից զդա առ քեզ եւ կացուցից ա-
ռաջի քո, յանցաւոր [4]եղէց զամենայն
10 աւուրս։ Զի եթէ չէաք յամեալ, արդ
11 երկիցս իսկ դարձեալ էր այսրէն։ Ասէ
ցնոսա Իսրայէլ հայրն իւրեանց, [5]Այդ
պէս իցէ, արարէք զայդ. առէք ի պտղոյ
երկրիս յամանս ձեր, եւ տարայք առնն
պատարագս, ռետին եւ մեղր եւ խունկս
12 եւ ստաշխն եւ բեւեկն եւ ընկոյզ. Եւ
արծաթ կրկին առէք ի ձեռս ձեր, եւ
զարծաթն որ դարձաւ յամանս ձեր՝ տա-
րայք ընդ ձեզ, գուցէ ընդ խաբս ինչ ի-
13 ցէ. Եւ զեղբայրդ ձեր առէք, եւ արիք
14 իջէք առ այրն. Եւ Աստուած [6]իմ տացէ
ձեզ շնորհս առաջի առնն, եւ արձա-
կեսցէ ընդ ձեզ զեղբայրն ձեր զմեւս
եւ զԲենիամին. բայց ես որպէս ան-
զաւակեցայ, անզաւակեցայ։
15 Եւ առեալ արանցն զպատարագն եւ
արծաթ կրկին ի ձեռս իւրեանց եւ զԲե-
նիամին, յարուցեալ իջին յԵգիպտոս,
16 եւ կացին յանդիման Յովսեփայ։ Իբրեւ
ետես [7]զնոսա Յովսէփ, եւ զԲենիամին
եղբայր իւր", ասէ ցհազարապետ տանն
իւրոյ, Տար զարսդ ի տուն, եւ զեն
զենլիս եւ պատրաստեա. զի ընդ իս
ուտելոց են արքդ այդոքիկ հաց ի մի-
17 ջօրէի։ Եւ արար այրն որպէս եւ ասաց
Յովսէփ. եւ տարաւ զարսն ի տուն
18 Յովսեփայ։ Եւ տեսեալ արանցն եթէ
տարան զնոսա ի տուն Յովսեփայ, ասեն,
Վասն արծաթոյն որ դարձաւ յամանս
մեր զառաջինն՝ մտանեմք մեք անդր
առ ի [8]խուզելոյ զմեզ, արկանել" ի վե-
րայ մեր, եւ առնուլ զմեզ ի ծառայս եւ
19 զէշս մեր։ Մատուցեալ առ այրն, վե-
րակացու տանն Յովսեփայ, խօսեցան առ
20 դրանն, Եւ ասեն, Աղաչեմք զքեզ, տէր,
21 իջաք զառաջինն գնել կերակուրս. Եւ ե-
ղեւ իբրեւ հասաք յիջավանս եւ բացաք
զամանս մեր, եւ արծաթն իւրաքանչիւր
յամանի իւրում էր. արդ զարծաթն այս-
րէն կշռով դարձուցաք, եւ աւասիկ ի ձե-
22 ռին մերում է. Եւ այլ արծաթ բերաք ընդ
մեզ, գնել" կերակուրս. եւ ոչ գիտեմք ով
23 եդ զարծաթն յամանս մեր։ Եւ ասէ ցնո-
սա, Խաղաղութիւն ընդ ձեզ, մի՛ երկնչիք.
Աստուածն ձեր եւ հարցն ձերոց ետ ձեզ
գանձս յամանս ձեր. այլ իմ զձեր ար-
ծաթն առեալ եւ հաճեալ եմ։ Եւ եհան
առ նոսա զՇմաւոն։
24 Եւ տարաւ ի ներքս այրն զորեարն ի
տուն Յովսեփայ, եւ բերին ջուր լուա-
նալ զոտս նոցա, եւ ետ կերակուր
25 գրաստուց նոցա։ Եւ նոքա պատրաստե-
ցին զպատարագն մինչչեւ եկեալ էր
Յովսէփ ի միջօրէին. քանզի լուան թէ
26 անդ ճաշելոց է։ Եմուտ Յովսէփ ի տուն,
եւ մատուցին նմա զընծայսն զոր ու-
նէին ի ձեռս իւրեանց՝ ի տան անդ, եւ
երկիր պագին նմա ի վերայ երեսաց իւր-
27 եանց յերկիր։ Եհարց զնոսա եւ ասէ,
Զիա՞րդ կայք. եւ ասէ ցնոսա եթէ Ո՞ղջ
իցէ հայրն ձեր ծերունի, զորմէ ասացէք
28 թէ տակաւին կենդանի է։ Եւ նոքա
ասեն, Ողջ է ծառայ քո հայր մեր, տա-

[1] Եբր. գնեսցուք քեզ [2] Յեբր. պակասէ [3] Եբր. մանկունք [4] Եբր. եղէց քեզ [5] Եբր. Եթէ այդ-
պէս [6] Եբր. Ամենակալ

[7] Եբր. ընդ նոսա Յովսէփ զԲենիամին [8] Եբր.
գլորելոյ ի վերայ մեր, և անկանելոյ

կաւրն կենդանի է. ՙԵւ ասէ, Օրհնեալ
է այրն այն յԱստուծոյ.՚՚ եւ խոնարհե-
29 ցան երկիր պագին նմա։ Ամբարձ զաչս
իւր եւ ետես զԲենիամին զեղբայր իւր
զհամամայր, եւ ասէ, Ա՞յդ է եղբայրն
ձեր կրտսեր զորմէ ասացէք ածել առ
իս. եւ ասէ, Աստուած ողորմեսցի քեզ,
30 որդեակ։ Եւ խռովեցաւ Յովսէփ, եւ
գալարէին աղիք նորա ի վերայ եղբօրն
իւրոյ, եւ խնդրէր լալ. մտեալ ի սենեակ
31 անդր ելաց։ Եւ լուացեալ զերեսս իւր՝
ել, ընդդէմ եկաց զանձն եւ ասէ, Արկէք
32 հաց։ Եւ արկին նմա միայնոյ, եւ նոցա
իւրաքանչիւր ումեք, եւ Եգիպտացւոցն
որ ճաշէին ընդ նմա՝ իւրաքանչիւր առան-
ձինն. զի ոչ կարէին Եգիպտացիքն ու-
տել հաց ընդ Եբրայեցիսն, քանզի գար-
33 շելի էին Եգիպտացւոցն։ Նստաւ առաջի
նորա անդրանիկն՝ ըստ երիցութեան իւ-
րում, եւ կրտսերն՝ ըստ կրտսերութեան
իւրում. եւ զարմացեալ էին արքն իւ-
34 րաքանչիւր ընդ եղբօր իւրում։ Եւ առին
իւրեանց մասունս ի նմանէ, եւ մեծա-
ցաւ մասն Բենիամինի քան զմասունս
ամենեցուն հնգապատիկ քան զնոցայն.
արբին եւ արբեցան ընդ նմա։

ԳԼ. ԽԴ

1 Եւ հրաման ետ Յովսէփ հազարապետին
իւրում եւ ասէ, Լցէք զամանս արանցն
կերակրով որչափ եւ կարիցեն բառնալ,
եւ դիք զարծաթն իւրաքանչիւր ի բե-
2 րան ամանոյ իւրոյ։ Եւ զսկիհն իմ ար-
ծաթի դիջիք յամանի կրտսերոյն, եւ
զգինս ցորենոյ նորա։ Եւ եղեւ ըստ բա-
նին Յովսեփայ որպէս եւ ասաց։
3 Եւ իբրեւ առաւօտ եղեւ, արձակեցան
4 արքն, ինքեանք եւ էշք իւրեանց։ Եւ
իբրեւ ելին ըստ քաղաքն, եւ չէին
մեկնեալ ի բաց, ասէ Յովսէփ ցհազա-
րապետն իւր, Արի՛, ընդդեմ զհետ ա-
րանցն, եւ հասցես նոցա, եւ ասասցես
ցնոսա, Զի՞ է զի հատուցէք չար փո-
խանակ բարեաց։ [1]Ընդէ՞ր գողացայք
5 զսկիհն արծաթի։՚՚ Ո՞չ այն էր որով ըմ-
պէր տէրն իմ, եւ նովաւ ինքն հմայե-
լով հմայէր. եւ արդ չար գործեցէք զոր
6 արարէքդ։ Եւ իբրեւ եգիտ զնոսա, ասէ
7 ըստ բանիցս այսոցիկ։ Եւ նոքա ասեն
ցնա, Ընդէ՞ր խօսիցի տէր այդպիսի
բանս. քաւ լիցի ծառայից քոց առնել
8 ըստ բանիդ այդմիկ։ Զի եթէ զարծաթն
զոր գտաք յամանս մեր՝ դարձուցաք
առ ձեզ յերկրէն Քանանացւոց, զիա՞րդ
գողանայաք ի տանէ տեառն քո արծաթ
9 կամ ոսկի։ Եւ արդ առ որում գտցի ի
ծառայից քոց սկիհն՝ մեռցի, եւ մեք
10 եղիցուք տեառն մերում ծառայք։ Եւ նա
ասէ, Այդպէս եղիցի որպէս ասացէքդ.
առ որում գտցի սկիհն՝ եղիցի իմ ծառայ,
11 եւ դուք անպարտք լինիցիք։ Եւ փու-
թացան իջուցին զբեռն իւրաքանչիւր ի
գետին, եւ բացին իւրաքանչիւր զաման
12 իւր։ Եւ յուզեաց՝ սկսեալ յերիցուէն
մինչեւ եկն կատարեաց ի կրտսերն, եւ
եգիտ զսկիհն յամանի Բենիամինի։
13 Եւ պատառեցին զհանդերձս իւրեանց,
եւ եդին իւրաքանչիւր զբեռն իւր ի
վերայ իշոյ իւրոյ, եւ դարձան ի քա-
14 ղաքն։ Եւ եմուտ Յուդա եւ եղբարք
իւր առ Յովսէփ, մինչդեռ անդէն էր,
եւ անկան առաջի նորա ի վերայ երկրի։
15 Ասէ ցնոսա Յովսէփ, Զի՞նչ են իրքդ
զոր արարէք. ո՞չ գիտէք թէ հմայելով
16 հմայէ այր որ իբրեւ զիս է։ Ասէ Յու-
դա, Զի՞նչ տացուք պատասխանի տեառն,
կամ զի՞նչ խօսիցիմք, կամ զո՞ր իրա-
ւունս ցուցանիցեմք. եգիտ Աստուած
զյանցանս ծառայից քոց. արդ աւասիկ
կամք ծառայք տեառն մերոյ, եւ մեք եւ
17 առ որում սկիհն գտաւ։ Եւ նա ասէ,
Քա՛ւ լիցի ինձ առնել զբանդ զայդ.
այրն առ որում սկիհն գտաւ՝ նա եղի-
ցի իմ ծառայ, եւ դուք ելէք ողջու-
թեամբ առ հայրն ձեր։
18 Մատուցեալ առ նա Յուդա եւ ասէ,
Աղաչեմ, տէր, խօսեսցի ծառայ քո բան
մի առաջի քո. մի՛ բարկասցիս ծառայի
19 քում, զի դու ես յետ Փարաւոնի։ Տէր,
դու հարցեր ցծառայս քո եւ ասացեր,
եթէ Կայցէ՞ ձեր հայր կամ եղբայր։
20 Եւ մեք ասեմք տեառն, Կայ մեր հայր
ծերացեալ, եւ մանուկ մի կրտսեր, որդի
ծերութեան նորա, եւ եղբայր նորա
մեռաւ, եւ նա միայն մնաց մօր իւրոյ,
21 եւ հայրն սիրէ զնա։ Եւ ասացեր ցծա-
ռայս քո, Իջուցէք զնա առ իս եւ [2]խնա-
22 մարկեցից նմա՚՚։ Եւ ասացաք ցտէր,
Ոչ կարէ մանուկն թողուլ զհայր իւր.
ապա թէ թողուցու զհայրն իւր՝ մեռանի։
23 Եւ դու ասացեր ցծառայս քո, Եթէ ոչ

[1] Եբր. գուշակ

[2] Եբր. եդից զակն իմ ի վերայ նորա

իջանիցէ եղբայրն ձեր կրտսեր ընդ ձեզ,
մի՛ յաւելուցուք տեսանել զերեսս իմ։
24 Եւ եղեւ իբրեւ ելաք մեք առ ծառայ
քո հայր մեր, պատմեցաք նմա զբանս
25 տեառն մերոյ։ Եւ ասէ հայրն մեր,
Երթայք դարձեալ գնեցէք մեզ սակաւ
26 մի կերակուր։ Եւ մեք ասացաք թէ Ոչ
կարեմք իջանել անդր, եթէ ոչ եղբայրդ
մեր կրտսեր իջանիցէ ընդ մեզ, եւ ա-
պա իջանիցեմք. զի ոչ կարեմք տեսա-
նել զերեսս առնն, եթէ եղբայրդ մեր
27 կրտսեր ընդ մեզ ոչ իցէ։ Եւ ասէ ցմեզ
ծառայ քո հայր մեր, Դուք իսկ գիտէք
28 զի երկուս ծնաւ ինձ կին իմ։ Մին ել
յինէն եւ [1]ասացէք թէ գազանակուր
եղեւ, եւ ոչ եւս տեսանեմ զնա մինչեւ
29 ցայժմ։ Արդ եթէ զսա եւս առնուցուք
յերեսաց իմոց, եւ պատահիցէ սմա
[2]հիւանդութիւն ի ճանապարհի", իջու-
ցանիցէք [3]զծերութիւնս իմ տրտմութեամբ
30 հանդերձ ի դժոխս։ Եւ արդ եթէ եր-
թայցեմք առ ծառայ քո հայր մեր, եւ
պատանեակս չիցէ ընդ մեզ, եւ նորա
31 ոգին կախեալ կայ զգորա ոգւոյդ. Եւ
լինիցի իբրեւ ոչ տեսանիցէ ընդ մեզ
զմանուկդ, վախճանիցի. եւ իջուցանի-
ցեն ծառայք քո [3]զծերութիւն ծառայի
քո հօր մերոյ չարչարանօք հանդերձ ի
32 դժոխս։ Զի ծառայի քո առեալ է յե-
րաշխի զմանուկդ ի հօրէ իւրմէ. ասեմ,
Եթէ ոչ ածից զդա առ քեզ [4]եւ կացու-
ցից առաջի քո", յանցաւոր եղէց առ
33 հայր իմ զամենայն աւուրս։ Եւ արդ
կացից ես ծառայ քո փոխանակ ման-
կանդ ստրուկ տեառն իմոյ, եւ պա-
34 տանեակդ ելցէ ընդ եղբարս իւր. Քան-
զի զիա՞րդ ելանիցեմ առ հայրն իմ, եթէ
պատանեակդ չիցէ ընդ մեզ. զի մի՛ տե-
սից զչարիսն որ գտանիցեն զհայրն իմ։

## Գլ. ԽԵ

1 Եւ ոչ կարաց Յովսէփ ժոյժ ունել առա-
ջի ամենեցուն որ շուրջ զնովաւն կային,
[5]այլ ասէ", Հանէք զամենեսին արտաքս
յինէն. եւ չկայր եւս ոք անդ առ նմա,
յորժամ ետ ծանօթս եղբարցն իւրոց։
2 Եւ ձայն [6]բարձեալ լալով հանդերձ՝ մինչ
լուան Եգիպտացիքն, եւ ազդ եղեւ ի
3 տուն Փարաւոնի։ Ասէ Յովսէփ ցեղ-
բարսն իւր, Ես եմ Յովսէփ. արդարեւ
տակաւին կենդանի՞ իցէ հայր իմ. եւ ոչ
կարէին եղբարքն նորա տալ նմա պա-
տասխանի, զի խռովեցան յերեսաց նո-
4 րա։ Ասէ Յովսէփ ցեղբարսն, Մօտ ե-
կայք առ իս. եւ չոգան մօտ, եւ ասէ,
Ես եմ Յովսէփ եղբայրն ձեր, զոր դուք
5 վաճառեցէք յԵգիպտոս։ Բայց մի՛ ինչ
տրտմիք, եւ մի՛ խիստ թուեսցի ձեզ զի
վաճառեցէք զիս այսր՝ քանզի ի փրկու-
թիւն առաքեաց զիս Աստուած առաջի
6 ձեր։ Զի այս երկրորդ ամ է սովոյս ի
վերայ երկրի, եւ այլ եւս հինգ ամ՝
7 յորս ոչ լինիցի վար եւ ոչ հունձ։ Եւ
զիս առաքեաց Աստուած առաջի ձեր
առ ի թողլոյ ձեզ զաւակ յերկրի, եւ
[7]կերակրել զձեր" մնացորդս մեծամեծս։
8 Եւ արդ ոչ եթէ դուք առաքեցէք զիս
այսր, այլ Աստուած. եւ արար զիս
հայր Փարաւոնի եւ տէր ամենայն տան
նորա, եւ իշխան ամենայն երկրիս Ե-
9 գիպտացւոց։ Արդ փութացեալ ելէք առ
հայրն իմ եւ ասացէք ցնա, Այսպէս ա-
սէ որդի քո Յովսէփ, Արար զիս Աս-
տուած տէր ամենայն երկրիս Եգիպտաց-
ւոց. արդ եկ էջ առ իս, եւ մի՛ հեղգար.
10 Եւ բնակեսցես յերկրին Գեսեմ՝ ՙյԱրա-
բիա, եւ եղիցես մօտ առ իս, դու եւ որ-
դիք քո եւ որդիք որդւոց քոց, եւ ոչխար
քո եւ արջառ քո եւ որ ինչ քո իցէ։
11 Եւ կերակրեցից զքեզ անդ. զի այլ եւս
հինգ ամ կայ սովոյս. զի մի՛ [8]սատակի-
ցիս, դու եւ որդիք քո եւ ամենայն
12 ստացուածք քո"։ Ահաւասիկ աչք ձեր
տեսանեն եւ աչք Բենիամենի եղբօր
իմոյ, զի բերան իմ խօսի ընդ ձեզ։
13 Արդ պատմեցէք հօր իմում զամենայն
զփառս իմ որ են յԵգիպտոս, եւ որչափ
ինչ տեսէք դուք. եւ փութացեալ ի-
14 ջուցէք զհայրն իմ այսր։ Եւ անկեալ ի
վերայ պարանոցին Բենիամենի եղբօր
իւրոյ ելաց, եւ Բենիամին ելաց ի վերայ
15 պարանոցի նորա։ Եւ համբուրեաց զա-
մենայն եղբարսն իւր, եւ ելաց ի վերայ
նոցա. յետ այնորիկ խօսեցան եղբարք
նորա ընդ նմա։
16 Եւ հնչեաց համբաւն ի տուն Փարա-
ւոնի, եւ ասեն, Եկին եղբարք Յովսե-
փու. ուրախ եղեւ Փարաւոն եւ ծա-
17 ռայք նորա։ Ասէ Փարաւոն ցՅովսէփ,

[1]Եբր. ասացի [2]Եբր. վտանգ [3]Եբր. զալիս
[4]Յեբր [illegible] [5]Եբր. և գոչեաց [6]Եբր. եբարձ

[7]Եբր. կեցուցանել ձեզ [8]Եբր. չքաւորեսցիս դու և տուն քո և ամենայն որ ինչ քո է

Ասա ցեղբարս քո, Այսպէս արարէք.
լցէք զբեռինս ձեր եւ երթայք յերկիրն
18 Քանանացւոց: Եւ առեալ զհայրն ձեր եւ
[1]զստացուածս ձեր՝ եկեսջիք առ իս. եւ
տաց ձեզ յամենայն բարութեանցս Եգիպ-
տացւոց, եւ կերիջիք զուղիղ երկրիս:
19 Եւ [2]դու զայս հրաման տացես՞. առնուլ
յերկրէս Եգիպտացւոց սայլս մանկանց
եւ կանանց ձերոց, եւ առեալ զհայրն
20 ձեր ածիցէք: Եւ մի ագահիցեն աչք ձեր
ի կահ ձեր, զի բարութիւն ամենայն
երկրիս Եգիպտացւոց ձեզ լինիցի:
21 Եւ արարին այնպէս որդիքն Իսրայելի.
եւ ետ նոցա Յովսէփ սայլս ըստ բա-
նիցն Փարաւոնի արքայի, եւ ետ նոցա
22 պաշար ի ճանապարհ: Եւ ամենեցուն
ետ կրկին պատմուճանս, եւ Բենիամինի
ետ երեք հարեւր [3]դահեկան եւ հինգ
23 պատմուճան փոխանակաւ: Եւ հօրն
իւրում ետ տանել [4]նոյնպէս, տասն իշոյ
բեռինս յամենայն բարութեանց Եգիպ-
տացւոց, եւ տասն ջորի նպարակաւոր,
եւ՞ կերակուր հօրն իւրում ի ճանապարհ:
24 Եւ արձակեաց զեղբարս իւր եւ գնացին.
եւ ասէ ցնոսա, Մի զայրանայցէք ինչ
ի ճանապարհի:
25 Ելին յԵգիպտոսէ, եւ չոգան յերկիրն
Քանանացւոց առ Յակոբ հայրն իւրեանց:
26 Եւ պատմեցին նմա եւ ասեն, Որդի քո
Յովսէփ կենդանի է, եւ նա է իշխան
ամենայն երկրին Եգիպտացւոց: Եւ
[5]զարմացաւ ի միտս իւր Յակոբ՞, զի
27 ոչ հաւատայր նոցա: Եւ խօսեցան ընդ
նմա զամենայն ինչ զոր ասաց Յովսէփ.
իբրեւ ետես զսայլսն զոր առաքեաց
Յովսէփ առնուլ զնա, արծարծեցաւ ո-
28 գին Յակոբայ հօր նոցա: Եւ ասէ Իս-
րայէլ, Մեծ է ինձ եթէ արդարեւ տա-
կաւին կենդանի իցէ որդի իմ Յովսէփ. եր-
թայց տեսից զնա մինչչեւ մեռեալ իցեմ:

Գլ. ԽԶ

1 Չուեաց Իսրայէլ, ինքն եւ ամենայն որ
ինչ իւր էր, եւ եկն ի Ջրհորն երդման,
եւ մատոյց պատարագ Աստուծոյ հօր
2 իւրոյ Իսահակայ: Խօսեցաւ Աստուած

[1]Եբր. զընտանիս [2]Եբր. հրամայեալ քեզ
[3]Եբր. արծաթի [4]Եբր. զայս օրինակ. տասն
իշոյ բեռինս ի բարութեանց Եգիպտացւոց, և
տասն էշ մատակ որ բառնային ցորեան և հաց և
[5]Եբր. նուաղեցաւ սիրտ նորա

ընդ Իսրայելի ի տեսլեան գիշերոյ, եւ
ասէ, Յակոբ, Յակոբ. եւ նա ասէ,
3 [6]Ո՞վ ես՞: Ասէ, Ես եմ Աստուած [7]հարցն
քոց՞. մի երկնչիր իջանել յԵգիպտոս,
4 զի յազգ մեծ արարից զքեզ անդ: Ես
իջից ընդ քեզ յԵգիպտոս, եւ ես հանից
զքեզ ի սպառ, եւ Յովսէփ դիցէ զձեռս
5 իւր ի վերայ աչաց քոց: Յարեաւ Յակոբ
ի Ջրհորոյ անտի երդման, եւ առին որդիքն
Իսրայելի զՅակոբ հայրն իւրեանց եւ
[8]զկազմած եւ զկանայս իւրեանց ի սայլսն
զոր առաքեաց [9]Յովսէփ առնուլ զնա:
6 Եւ առեալ [10]զինչս իւրեանց եւ զամենայն
ստացուածս զոր ստացան յերկրին Քա-
նանացւոց, մտին յԵգիպտոս Յակոբ եւ
7 ամենայն զաւակ նորա ընդ նմա, Որդիք
նորա եւ որդիք որդւոց նորա ընդ նմա,
դստերք նորա եւ դստերք [11]դստերաց
նորա, եւ զամենայն զաւակ իւր ած
յԵգիպտոս[12]:
8 Եւ այս են անուանք որդւոցն Իսրա-
յելի որ մտին յԵգիպտոս. Յակոբ եւ որ-
դիք իւր. անդրանիկ Յակոբու՝ Ռուբէն.
9 Եւ որդիք Ռուբենի՝ Ենովք եւ Փալլուս,
10 Ասրոմն եւ Քարմի: Եւ որդիք Շմաւո-
նի՝ Յամուէլ եւ Յամին եւ Աւովդ եւ
Յաքին եւ Սահառ եւ Սաւուղ որդի
11 Քանանացւոյն: Եւ որդիք Ղեւեայ՝ Գեր-
12 սոն եւ Կահաթ եւ Մերարի: Եւ որդիք
Յուդայ՝ Էր եւ Աւնան եւ Սելովմ եւ
Փարէս եւ Զարա. եւ մեռան Էր եւ
Աւնան յերկրին Քանանացւոց. եւ եղեն
որդիք Փարեսի՝ Ասրովմ եւ Յամուէլ:
13 Եւ որդիք Իսաքարայ՝ Թովղա եւ Փուա
14 եւ Յասուբ եւ Զամամ: Եւ որդիք Զա-
15 բուղոնի՝ Սերեդ եւ Ալլոն եւ Էէլ: Սո-
քա են որդիք Լիայ՝ զոր ծնաւ Յակոբայ ի
Միջագետս Ասորւոց, եւ զԴինա դուստր
նորա. ամենայն ոգիք, ուստերք եւ
16 դստերք, երեսուն եւ երեք: Եւ որդիք
Գադայ՝ Սափոն եւ Մեգիս եւ Սաւնիա
եւ Թաւսոբամ եւ Այեդիս եւ Արոյէլիս
17 եւ Արիէլիս: Եւ սոքա են որդիք Ասերայ՝
Յեմնա եւ Յեսուա եւ Յէուլ եւ Բարիա
եւ Սարա քոյր նոցա. եւ որդիք Բարիայ՝
18 Քոբոր եւ Մեղքիէլ: Սոքա են որդիք
Զելփայ, զոր ետ Լաբան Լիայ դստերն
իւրում, որ ծնաւ զսոսա Յակոբայ, վից-

[6]Եբր. Աւասիկ եմ [7]Եբր., Աստուած հօր քո
[8]Եբր. զմանկունս [9]Եբր. Փարաւոն [10]Եբր.
զանասունս [11]Եբր. որդւոց [12]Եբրայեցին
յաւելու, ընդ իւր

19 տասան [1]որդիս ։ Եւ որդիք Ռաքելայ
կնոջ Յակոբայ՝ Յովսէփ եւ Բենիամին ։
20 Եւ եղեն որդիք Յովսեփայ յերկրին Ե-
գիպտացւոց , զորս ծնաւ նմա Ասանէթ
դուստր Պետափրեայ քրմի Արեգ քաղա-
քի , զՄանասէ եւ զԵփրեմ ։ [2]Եւ եղեն
որդիք Մանասէի զոր ծնաւ նմա հարճն
Ասորի, զՄաքիր . եւ Մաքիր ծնաւ զԳա-
ղաադ ։ Եւ որդիք Եփրեմի եղբօրն Մա-
նասէի՝ Սուտաղաամ եւ Տաամ . եւ որդի
21 Սուտաղաամայ Եդեմ՛՛ Եւ որդիք Բենիա-
մինի՝ Բագա եւ Բոքոր եւ Ասբէլ , [2]եւ
եղեն որդիք Բագայ՛՛ Գէերա եւ Նէեման
եւ Անաքիս եւ Ռովս եւ Մամփիմ եւ
22 Ոփիմին, եւ [3]Գէերա ծնաւ զԱրադ՛՛ ։ Սոքա
են որդիք Ռաքելի զոր ծնաւ Յակոբայ ,
23 ամենայն ոգիք [4]ութ եւ տասն՛՛ ։ Եւ որդիք
24 Դանայ՝ Ասոմ ։ Եւ որդիք Նեփթաղեմի՝
25 Ասիէլ եւ Գովնի եւ Ասար եւ Սեղիմ ։ Սո-
քա են որդիք Բալլայ զոր ետ Լաբան Ռա-
քելի դստեր իւրում, եւ ծնաւ զսոսա
26 Յակոբայ . ամենեքին ոգիք եւթն ։ Եւ
ամենայն ոգիք որ մտին ընդ Յակոբայ
յԵգիպտոս, որ ելեալ էին յերանաց նորա ,
առանց կանանց որդւոցն Յակոբայ , ա-
27 մենայն ոգիք վաթսուն եւ վեց ։ Եւ որ-
դիք Յովսեփայ որ եղեն նմա յԵգիպտոս ,
ոգիք երկու . եւ ամենայն ոգիք տանն
Յակոբու որ մտին յԵգիպտոս՝ եւթանա-
սուն [2]եւ հինգ՛՛ ։
28 Եւ զՅուդա յառաջագոյն առաքեաց առ
Յովսէփ , [5]գալ նմա ընդ առաջ զՔաջայց
քաղաքաւն , յերկիրն Ռամեսսա . եւ ինքն
29 եկն՛՛ յերկիրն Գեսեմ ։ Կազմեաց Յովսէփ
զկառս իւր , եւ ել ընդ առաջ Իսրայէլի
հօր իւրոյ [6]զՔաջայց քաղաքաւն՛՛ . եւ իր-
րեւ յանդիման եղեւ նմա , անկաւ ի վե-
րայ պարանոցի նորա , եւ ելաց ի լալիւն
30 մեծ ։ Եւ ասէ Իսրայէլ ցՅովսէփ, Մեռայց
այսուհետեւ , որովհետեւ տեսի զերեսս
31 քո զի տակաւին կենդանի ես ։ Եւ ասէ
Յովսէփ ցեղբարս իւր եւ ցտուն հօր
իւրոյ , Երթայց պատմեցից Փարաւոնի ,
[7]եթէ Եղբարք՛՛ իմ եւ տուն հօր իմոյ որ
էին յերկրին Քանանացւոց՝ եկին առ իս .
32 Եւ արք հովիւք են , եւ արք խաշնա-
դարմանք են , եւ զանասուն եւ զարջառ
եւ զամենայն ինչ իւրեանց ածին այսր ։

[1]Եբր. ոգիք [2]Յ Եբր. պակաս [3]Եբր. Արադ
[4]Եբր. չորեքտասան [5]Եբր. ցուցանել առա-
ջի իւր զԳեսեմ, և եկին [6]Եբր. ի Գեսեմ
[7]Եբր. եւ ասացից ցնա , Եղբարք

33 Արդ եթէ կոչիցէ զձեզ Փարաւոն եւ ասի-
34 ցէ , Զինչ գործ է ձեր , Ասասջիք եթէ ,
Արք խաշնադարմանք եմք ծառայք քո
ի մանկութենէ մինչեւ ցայժմ , եւ մեք
եւ հարք մեր . զի բնակիցէք յերկրին Գե-
սեմ . քանզի պարշելի է Եգիպտացւոց
ամենայն հովիւ խաշանց ։

## ԳԼ . ԽԷ

1 Եւ եկեալ Յովսէփ պատմեաց Փարաւոնի,
եւ ասէ , Հայր իմ եւ եղբարք , եւ խա-
շինք եւ առջառ նոցա , եւ ամենայն որ
ինչ նոցա , եկին յերկրէն Քանանացւոց ,
2 եւ ահա են ի Գեսեմ ։ Եւ յեղբարց անտի
իւրոց առ ընդ իւր հինգ այր , եւ կացոյց
3 զնոսա առաջի Փարաւոնի ։ Եւ ասէ Փա-
րաւոն ցեղբարսն Յովսեփու, Զինչ գործ է
ձեր . եւ նոքա ասեն ցՓարաւոն, Հովիւք
խաշանց են ծառայք քո, եւ մեք եւ հարք
4 մեր ։ Եւ ասեն ցՓարաւոն , Պանդխտանալ
եկաք յերկրիս յայսմիկ, զի ոչ գոյր ճարակ
խաշանց ծառայից քոց , քանզի սաստկա-
ցաւ սով յերկրին Քանանացւոց. եւ արդ
բնակեսցուք ծառայք քո յերկրին ի Գե-
5 սեմ ։ Եւ խօսեցաւ Փարաւոն ընդ Յով-
սեփու եւ ասէ , Հայր քո եւ եղբարք քո
6 եկին առ քեզ . Ահա երկիրս Եգիպտաց-
ւոց առաջի քո է . ի բարւոք երկրի բնա-
կեցո զհայր քո եւ զեղբարս քո . եւ բնա-
կեսցեն յերկրին ի Գեսեմ. ապա թէ գիտես
թէ իցեն ի նոսա արք զօրաւորք , կացո
զնոսա իշխանս ի վերայ իմոց խաշանց ։
7 Եւ ած Յովսէփ զՅակոբ հայր իւր , եւ
կացոյց առաջի Փարաւոնի . եւ օրհնեաց
8 Յակոբ զՓարաւոն ։ Եւ ասէ Փարաւոն
ցՅակոբ , Քանի՞ են ամք աւուրց կենաց
9 քոց ։ Եւ ասէ Յակոբ ցՓարաւոն , Աւուրք
ամաց կենաց իմոց զորս պանդխտեցայ՝
հարիւր եւ երեսուն ամ է . սակաւք եւ
դժուարինք եղեն աւուրք ամաց կենաց
իմոց , եւ ոչ հասին յաւուրս ամաց կե-
նաց հարց իմոց , զոր աւուրս պանդխտե-
10 ցան ։ Եւ օրհնեաց Յակոբ զՓարաւոն եւ
ել ի նմանէ ։
11 Եւ բնակեցոյց Յովսէփ զհայրն իւր եւ
զեղբարս իւր , եւ ետ նոցա բնակութիւն
յերկրին Եգիպտացւոց ի բարւոք երկրի ,
յերկրին Ռամեսսայ , որպէս հրամայեաց
12 Փարաւոն ։ Եւ տայր Յովսէփ ռոճիկս հօրն
եւ եղբարց իւրոց , եւ ամենայն տան հօր
իւրոյ ցորեան ըստ բերան ։

13 Եւ կերակուր ոչ գոյր յամենայն երկ-
րին, զի սաստկացաւ սովն յոյժ. եւ նուա-
ղեաց երկիրն Եգիպտացւոց եւ երկիրն
14 Քանանացւոց ի սովոյ անտի։ Եւ ժողո-
վեաց Յովսէփ զամենայն արծաթ գտեալ
յերկրին Եգիպտացւոց եւ յերկրին Քա-
նանացւոց ընդ ցորենոյն զոր վաճառէր,
[1]եւ տայր նոցա կերակուրս". եւ տարաւ
Յովսէփ զամենայն արծաթն ի տունն Փա-
15 րաւոնի։ Եւ նուազեաց արծաթ յերկրէն
Եգիպտացւոց եւ յերկրէն Քանանացւոց.
եկին ամենայն Եգիպտացիք առ Յովսէփ
եւ ասեն, Տուր մեզ հաց, ընդէ՞ր մեռա-
նիմք առաջի քո. զի պակասեաց արծաթ։
16 Ասէ ցնոսա Յովսէփ, Ածէք զանասունս
ձեր, եւ տաց ձեզ հաց փոխանակ անասու-
նոց ձերոց, եթէ պակասեաց արծաթ։
17 Եւ ածին զանասունս առ Յովսէփ, եւ
ետ նոցա Յովսէփ հաց փոխանակ ձիոյ
եւ փոխանակ ոչխարի եւ փոխանակ ար-
ջառոյ եւ փոխանակ իշոյ. եւ կերակրեաց
զնոսա հացիւ փոխանակ ամենայն ա-
նասնոց նոցա յամին յայնմիկ։
18 Ել այն ամ, եւ եկին առ Յովսէփ յերկ-
րորդ ամին եւ ասեն ցնա, [2]Գուցէ սա-
տակիցիմք" ի տեառնէ մերմէ. եթէ ար-
ծաթ էր՝ պակասեաց, եւ եթէ խաշինք
եւ ստացուածք, առ քեզ են, տէր. եւ չէ
ինչ մնացեալ մեր առաջի տեառն, բայց
19 միայն անձինք եւ երկիրս մեր. Արդ [3]զի
մի" մեռանիցիմք առաջի քո, եւ մեք,
եւ [4]երկիրս աւերեսցի". ստացիր զմեզ եւ
զերկիրս մեր փոխանակ հացի, եղիցուք
մեք եւ երկիրս մեր ծառայք Փարաւոնի.
տուր սերմն [1]զի սերմանեսցուք", եւ կեց-
ցուք եւ մի մեռցուք, եւ երկիրս մի աւե-
20 րեսցի։ Եւ ստացաւ Յովսէփ զամենայն
երկիրն Եգիպտացւոց Փարաւոնի. քանզի
վաճառեցին Եգիպտացիքն զերկիրն իւ-
րեանց Փարաւոնի, զի սաստկացաւ ի վե-
րայ նոցա սովն, եւ եղեւ երկիրն Փա-
21 րաւոնի։ Եւ զժողովուրդն [5]ծառայեցոյց
իւր ի ստրուկս", ի ծագաց սահմանաց
22 Եգիպտոսի մինչեւ ի ծագս նորուն։ Բաց
յերկրէ քրմացն, զի ոչ ստացաւ զնոսա
Յովսէփ. քանզի տալով տայր պարգեւս
քրմացն Փարաւոն, եւ ուտէին զպար-
գեւսն զոր տայր նոցա Փարաւոն. վասն
այնորիկ ոչ վաճառեցին զերկիրն իւրեանց։

[1] Յէբր. պակասէ [2] Եբր. Մի՛ ինչ թաքուսցուք
[3] Եբր. ընդէ՞ր [4] Եբր. երկիր մեր [5] Եբր. փո-
խեաց ի քաղաքս

23 Ասէ Յովսէփ [6]ցամենայն Եգիպտացիսն",
Ահա ստացայ զձեզ այսօր եւ զերկիր ձեր
Փարաւոնի. առէք ձեզ սերմանս եւ սեր-
24 մանեցէք զերկիրդ։ Եւ եղիցին արդիւնք
դորա, եւ տայցէք զհինգերորդ մասն Փա-
րաւոնի, եւ չորք մասունքն ձեր եղիցին
ի սերմն երկրիդ եւ ի կերակուր ձեզ եւ
ամենայն ընտանեաց ձերոց, եւ ի կերա-
25 կուր տղայոց ձերոց։ Եւ ասեն, Կեցու-
ցեր զմեզ, գտաք շնորհս առաջի տեառն
մերոյ, եւ եղիցուք ծառայք Փարաւոնի։
26 Եւ եդ նոցա օրէնս Յովսէփ մինչեւ ցայս-
օր յերկրին Եգիպտացւոց՝ հինգերորդել
Փարաւոնի, բաց յերկրէ քրմացն որ չէր
Փարաւոնի։
27 Եւ բնակեաց Իսրայէլ յերկրին Եգիպ-
տացւոց յերկրին ի Գեսեմ. եւ ժառան-
գեցան ի նմա, եւ աճեցին եւ բազմա-
ցան յոյժ։
28 Եւ եկեաց Յակոբ յերկրին Եգիպտա-
ցւոց ամս եւթն եւ տասն, եւ եղեն աւուրք
Յակոբայ ամաց կենաց նորա հարեւր եւ
29 քառասուն եւ եւթն ամ։ Եւ մերձեցան
աւուրք Իսրայելի մեռանելոյ, եւ կոչեաց
զորդի իւր զՅովսէփ եւ ասէ ցնա, Եթէ
գտի շնորհս առաջի քո, դիր զձեռն քո
ընդ երանօք իմովք, եւ արասցես ի վե-
րայ իմ ողորմութիւն եւ ճշմարտութիւն,
30 չթաղել զիս յԵգիպտոս. Այլ ննջեցից ընդ
հարսն իմ, եւ բարձցես զիս յԵգիպտոսէ,
եւ թաղեսցես զիս ի գերեզմանի նոցա։
Եւ նա ասէ, Ես արարից ըստ բանի քում։
31 Եւ ասէ, Երդուիր ինձ. եւ երդուաւ նմա։
Եւ երկիր եպագ Իսրայէլ ի վերայ գլխոյ
[7]գաւազանի իւրոյ"։

## ԳԼ. ԽԸ

1 Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ ազդ եղեւ
Յովսեփայ եթէ Յակոբ հայր քո նեղեալ
է. եւ [8]առեալ Յովսեփայ" զերկուս որ-
դիսն իւր ընդ իւր, զՄանասէ եւ զԵփրեմ,
2 [1]եկն առ Յակոբ։" Ազդ եղեւ Յակոբայ
եւ ասեն, Ահա որդի քո Յովսէփ գայ առ
քեզ. եւ զօրացաւ Իսրայէլ եւ նստաւ
3 ի մահիճս։ Եւ ասէ Յակոբ ցՅովսէփ, Աս-
տուած [9]իմ երեւեցաւ ինձ ի Լուզ, յերկրին
4 Քանանացւոց. օրհնեաց զիս. Եւ ասէ
ցիս, Ահա ես աճեցուցից զքեզ, եւ բազ-
մացուցից զքեզ, եւ արարից զքեզ ի ժո-

[6] Եբր. ցժողովուրդն [7] Կամ. մահճացն (Տես ԳԼ.
ԽԸ. 2) [8] Եբր. Յովսէփ առ [9] Եբր. Ամենակալ

ղովս ազգաց. եւ տաց [1]քեզ զերկիրս զայս"
5 ի ժառանգութիւն յաւիտենական ։ Արդ
երկու որդիք քո որ եղեն յԵգիպտոս մինչ-
չեւ եկեալ էր իմ յԵգիպտոս՝ իմ են, Եփրեմ
եւ Մանասէ իբրեւ զՌուբէն եւ զՇմաւոն
6 եղիցին ինձ ։ Եւ այլ ծնունդք զոր ծնա-
նիցիս յետ [2]այսորիկ՝ քեզ եղիցին . յա-
նուն եղբարց իւրեանց կոչեսցին ի նոցա
7 ժառանգութիւնս ։ Եւ ես յորժամ գայի ի
Միջագետաց Ասորւոց, մեռաւ [3]մայր քո"
Ռաքէլ յերկրին Քանանացւոց, [4]ի մերձե-
նալ ինձ յասպարէզ երկրին Քաբրաթայ,
ի գալն" յԵփրաթա . եւ թաղեցի զնա
[5]յերկրի ասպարիսին", այն է Բեթղեհեմ ։
8 Իբրեւ ետես Իսրայէլ զորդիսն Յով-
9 սեփայ , ասէ , Զի՞նչ են սոքա քո ։ Ասէ
Յովսէփ ցհայրն իւր , Որդիք իմ են զոր
ետ ինձ Աստուած աստ . եւ ասէ Յա-
կոբ , Մատո առ իս զդոսա , զի օրհնեցից
10 զդոսա ։ Եւ աչք Իսրայելի ծանրացեալ
էին ի ծերութենէ անտի , եւ ոչ կարէր
տեսանել . եւ մատոյց զնոսա առ նա ,
եւ համբուրեաց զնոսա , եւ ի գիրկս իւր
11 առ զնոսա ։ Եւ ասէ Իսրայէլ ցՅովսէփ ,
[6]Ահա յերեսաց քոց ոչ կարօտ եղէ, եւ"
եցոյց եւս ինձ Աստուած զզաւակ քո ։
12 Եւ եհան զնոսա Յովսէփ ի ծնգաց նորա
եւ [7]երկիր պագին նմա ի վերայ երեսաց
13 իւրեանց" յերկիր ։ Եւ առեալ Յովսէ-
փայ զերկոսին որդիսն իւր , զԵփրեմ
ընդ աջմէ՝ ի ձախմէ Իսրայելի, եւ զՄա-
նասէ ի ձախմէ՝ յաջմէ Իսրայելի , մա-
14 տոյց զնոսա առ նա ։ Եւ ձգեալ Իսրա-
յելի զաջ ձեռն իւր՝ արկ զգլխովն Եփրե-
մի , եւ նա էր կրտսեր , եւ զձախն՝ զգլ-
խովն Մանասէի, եւ փոփոխեաց [8]զձեռսն,
15 զի Մանասէ էր անդրանիկ ։ Եւ օրհնեաց
[9]զնոսա եւ ասէ , Աստուած , որում հա-
ճոյ եղեն հարքն իմ առաջի նորա , Աբ-
րահամ եւ Իսահակ , Աստուած՝ որ կե-
րակրէ զիս ի մանկութենէ իմմէ մինչեւ
16 ցայսօր , Հրեշտակն որ փրկեաց զիս
յամենայն չարեաց , օրհնեսցէ զմանկունս
զայսոսիկ , եւ կոչեսցի ի սոսա անուն
իմ եւ անուն հարց իմոց , Աբրահամու
եւ Իսահակայ , եւ օրհնեսցին ի բազմու-
17 թիւն յոյժ ի վերայ երկրի ։ Եւ տեսեալ
Յովսեփայ եթէ արկ հայրն զաջ իւր
զգլխովն Եփրեմի, ծանր թուեցաւ նմա.
եւ օգնեաց Յովսէփ ձեռին հօրն իւրոյ ,
հանել զնա ի գլխոյն Եփրեմի ի գլուխն
18 Մանասէի ։ Ասէ Յովսէփ ցհայրն իւր , Ոչ
այդպէս է , հայր. քանզի սա է անդրանիկ.
19 դիր զաջ քո ի վերայ գլխոյ սորա ։ Եւ ոչ
կամեցաւ հայրն նորա , այլ ասէ , Գիտեմ
որդեակ , գիտեմ . եւ դա եղիցի ի ժողո-
վուրդ , եւ դա բարձրասցի. այլ եղբայրս
դորա կրտսեր՝ եղիցի մեծ քան զդա , եւ
զաւակ սորա եղիցի ի բազմութիւն ազ-
20 գաց ։ Եւ օրհնեաց զնոսա յաւուր յայն-
միկ , եւ ասէ , [10]ի ձեզ օրհնեսցի" Իս-
րայէլ . ասասցեն , թէ Արասցէ զքեզ Աս-
տուած իբրեւ զԵփրեմ եւ զՄանասէ . եւ
եդ զԵփրեմ յառաջ քան զՄանասէ ։
21 Եւ ասէ Իսրայէլ ցՅովսէփ, Ես ատասիկ
մեռանիմ , եւ Աստուած եղիցի ընդ ձեզ
եւ դարձուսցէ զձեզ յերկիր հարցն ձերոց։
22 Եւ եսետու քեզ [11]զՍիկիմ սեպհական ,
արտաքոյ եղբարց քոց", զոր առի ի ձեռաց
Ամորհացւոց սրով իմով եւ աղեղամբ ։

## Գլ. ԽԹ

1 Կոչեաց Յակոբ զորդիսն իւր եւ ասէ ,
Ժողովեցարուք , զի պատմեցից ձեզ ինչ,
որ պատահիցէ ձեզ ի վախճանի աւուրց։
2 Ժողովեցարուք, եւ լուարուք, որդիք Յա-
կոբայ . լուարուք Իսրայելի հօր ձերում ։
3 Ռուբէն , անդրանիկ իմ , դու զօրու-
թիւն իմ եւ սկիզբն [12]որդւոց իմոց ,
խստութեամբ գնացեր եւ խստութեամբ
4 յանդգնութեամբ թշնամանեցեր ։ Իբրեւ
զջուր մի՛ եռասցես". զի ելեր յանկողինս
հօր քո , յայնժամ պղծեցեր . [13]զանկո-
ղինս յոր ելեր"։
5 Շմաւոն եւ Ղեւի եղբարք . [14]կատարե-
ցին զանիրաւութիւն ի կամաց իւրեանց"։
6 Ի խորհուրդս նոցա մի՛ մտցէ անձն իմ,
եւ ի ժողովս նոցա ոչ հաճեսցին միտք
իմ . զի սրտմտութեամբ իւրեանց սպա-
նին զարս , եւ ցանկութեամբ իւրեանց
7 կարթակոտոր արարին զցուլս ։ Անի-
ծեալ սրտմտութիւն նոցա, զի յանդուգն

[1]Եբր. զերկիրս զայս զաւակի քում յետ քո
[2]Եբր. նոցա [3]Եբր. առընթեր ինձ [4]Եբր. ի ճանապարհին , մինչ էր տակաւին փոքր ի մտանել [5]Եբր. անդ ի ճանապարհին Եփրաթայ
[6]Եբր. Ոչ ակն ունէի տեսանել զերեսս քո, և ահա
[7]Եբր. երկիր եպագ ի վերայ երեսաց իւրոց
[8]Եբր. զձեռսն խորհրդով [9]Եբր. զՅովսէփ

[10]Եբր. Ի քեզ օրհնեսցէ [11]Կամ. մեւս եւս բաժին, ի վերայ եղբարց քոց
[12]Եբր. զօրութեան իմոյ , առաւելութիւն բարձրութեան և առաւելութիւն մեծութեան ։
(4) Եռացեր իբրեւ զջուր , մի՛ առաւելուցուս
[13]Եբր. . յանկողի՛նս իմ ել [14]Եբր. անօթք անիրաւութեան՝ սուսերք նոցա

էր . եւ ոխութիւն նոցա , զի խիստ էր .
բաժանեցից զնոսա ի մէջ Յակոբայ, եւ
ցրուեցից զնոսա ի մէջ Իսրայէլի ։
8 Յուդա , զքեզ օրհնեսցեն եղբարք քո.
ձեռք քո ի վերայ թիկանց թշնամեաց
քոց . երկիր պագցեն քեզ որդիք հօր
9 քո ։ Կորիւն առիւծու Յուդա . [1]ի շա-
ռաւիղէ ելեր , որդեակ իմ . ելեր բազ-
մեցար, ննջեցեր իբրեւ զառեւծ եւ իբրեւ
զկորիւն առիւծու . ո՞ յարուցանէ զնա ։
10 Մի՛ պակասեսցէ իշխան ի Յուդայ, եւ մի՛
պետ յերանաց նորա , մինչեւ [2]եկեսցեն
նմա հանդերձեալքն", եւ նա է ակնկա-
11 լութիւն հեթանոսաց ։ Կապեսցէ զորթոյ
զյաւանակ իւր, եւ զգնդակէն՝ զյաւանակ
իշոյն . լուասցէ գինւով զպատմուճան
իւր , եւ արեամբ խաղողոյ զհանդերձս
12 իւր ։ Զուարթագին են աչք նորա ի գին-
ւոյ եւ սպիտակ ատամունք իւր քան
զկաթն ։
13 Զաբուղոն յեզերս ծովու բնակեսցէ, եւ
ինքն նաւահանգիստ նաւաց, եւ ձգեսցի
մինչեւ ի Սիդոն ։
14 Իսաքար [3]բարւոյ ցանկացաւ", հան-
15 գուցեալ ի մէջ [4]վիճակաց . Տեսեալ
զհանգիստն զի գեղեցիկ էր , եւ զեր-
կիրն զի պարարտ էր , եդ զուս իւր յաշ-
խատել , եւ եղեւ [5]այր արդիւնարար"։
16 Դան դատեսցէ զժողովուրդ իւր իբ-
17 րեւ [6]զմի այր ի մէջ" Իսրայէլի ։ Եւ ե-
ղիցի Դան օձ [7]դարանակալ ի ճանապար-
հի", հարկանել զգարշապար երիվարի, եւ
18 ընկենուլ զհեծեալն յետս ։ [8]Եւ մնայ
19 փրկութեան Տեառն"։ [9]Գադ հինի ելցէ",
եւ ինքն ելցէ հինիւ զհետ նոցա ։
20 Ասերայ պարարտ հաց իւր , եւ ինքն
տացէ կերակուր իշխանաց ։
21 Նեփթաղիմ [10]ծառ բարձրացեալ , ա-
ճեցուցանել արմատօք , զգեցուցանել
արմատօք զգեղեցկութիւն ։
22 Որդեակ աճեցեալ Յովսէփ , որդեակ
աճեցեալ նախանձելի . որդեակ իմ մա-
23 տաղ , առ իս դարձիր ։ Զոր բանսարկուք
բամբասէին եւ դատափետ առնէին , եւ
24 ոխանայլին ընդ նմա արք աղեղանց։ Եւ
փշրեցան զօրութեամբ աղեղունք իւր-
եանց , եւ լուծան ջիլք բազկաց նոցա
ձեռամբ Հզօրին Յակոբայ . անտի որ զօ-
25 րացոյց զԻսրայէլ , ՅԱստուծոյ հօրն քո,
եւ օգնեաց քեզ Աստուած իմ , եւ օրհ-
նեաց զքեզ օրհնութիւն երկնից ի վե-
րուստ , եւ զօրհնութիւն երկրի՝ լի ամե-
նայնիւ . վասն օրհնութեանց ստեանց եւ
26 արգանդի ։ Օրհնութեանց հօր քո եւ մօր
քո , որ զօրացան քան զօրհնութիւնս
լերանց մշտնջենաւորաց , եւ քան զօրհ-
նութիւնս բլրոց յաւիտենականաց. եղիցի
ի վերայ գլխոյ Յովսեփայ , եւ ի վերայ
գլխոյ եղբարցն որոց առաջնորդեաց ։"
27 Բենիամին գայլ յափշտակող , զայ-
գուն գեռ եւս ուտիցէ , եւ առ երեկս
բաշխիցէ [11]կերակուրս ։
28 Ամենեքեան սոքա [12]որդիք Յակոբայ՝
ազգք" երկոտասան . եւ այս է զոր
խօսեցաւ ընդ նոսա հայրն իւրեանց, եւ
օրհնեաց զնոսա . իւրաքանչիւր ըստ
օրհնութեան իւրում օրհնեաց զնոսա ։
29 Եւ պատուիրեաց նոցա եւ ասէ ցնոսա,
Ես յաւելում առ ժողովուրդ իմ . թաղե-
ցէք զիս ընդ հարս իմ յայրի անդ որ է
30 յագարակին Եփրոնի Քետացւոյ . Յայրին
որ յանդի անդ է , [13]ի կրկնում , յանդի-
ման Մամբրէի յերկրին Քանանացւոց՝
զոր ստացաւ Աբրահամ [14]զայրն յԵփրո-
նէ Քետացւոյ ի ստացուածս շիրմի ։
31 Անդ թաղեցին զԱբրահամ եւ զՍառա
զկին նորա . անդ թաղեցին զԻսահակ
եւ զՌեբեկա կին նորա . անդ [15]թաղե-
32 ցին զԼիա ։ Ի ստացուածի ագարակին
եւ այրին որ է ի նմա առ ի յորդւոցն
33 Քետայ ։ Եւ դադարեաց Յակոբ ի պա-
տուիրելոյ որդւոցն իւրոց , եւ առեալ
զոտս իւր անդրէն ի մահիճսն՝ պակա-
սեաց , եւ յաւելաւ առ ժողովուրդ իւր ։

[1]Եբր. յաւարէ [2]Եբր. եկեսցէ Շելով [3]Եբր. էշ ուժեղ [4]Կամ, գոմոց [5]Եբր. հարկատու ծառայ [6]Եբր. զմին ի ցեղից [7]Եբր. ի ճանապարհի և իժ յուղւոջ [8]Եբր. Սպասեցի փրկութեան քում, Տէր [9]Եբր. Գադ՝ եկցէ ի նա հէն [10]Եբր. եղն արձակեալ, որ տայ բանս գեղեցկութեան ։ (22) Յովսէփ շառաւիղ պտղատու , շառաւիղ առ աղբեր . դստերք (ոստք) նորա ելանեն զորմով ։ (23) Աղեղնաւորք դառնացուցին զնա, նետաձիգ լինէին և ատէին զնա ։ (24) Այլ աղեղն նորա բնակեաց ի հաստի , և զօրացան բազուկք ձեռաց նորա ի ձեռաց Հզօրին Յակոբայ ։ Անտի հովիւն, վէմ Իսրայելի ։ (25) ՅԱստուծոյ հօրն քո, և նա օգնեսցէ քեզ , յԱմենակալէն՝ և նա օրհնեսցէ զքեզ , օրհնութիւն երկնից ի վերուստ, օրհնութիւնք անդնդոց որ ընկողմանին ի ներքոյ . օրհնութիւնք ստեանց և արգանդի ։ (26) Օրհնութիւնք հօր քո զօրացան քան զօրհնութիւնս ծնանելեաց իմոց մինչեւ ի կատար բլրոց յաւիտենականաց . եղիցի ի գլուխ Յովսեփայ , ի գագաթան սքանչելւոյն եղբարց իւրոց ։ [11]Եբր. կողոպուտս [12]Եբր. ազգք Իսրայելի [13]Եբր. ի Մաքփեղա [14]Եբր. զարտն [15]Եբր. թաղեցի

## Գլ. Ծ

1 Եւ անկեալ Յովսէփ ի վերայ երեսաց հօր
իւրոյ լայր զնա, եւ համբուրեաց զնա։
2 Եւ հրաման ետ Յովսէփ ծառայից իւրոց
[1]զփաղարգաց պատել զհայրն իւր. եւ
3 պատեցին [2]զփաղարգիկքն զԻսրայէլ։ Եւ
լցան նորա աւուրք քառասուն, զի այն-
պէս թուէին աւուրք [3]թաղելոց. եւ սուգ
առ վասն նորա Եգիպտոս աւուրս եւ-
4 թանասուն։ Եւ իբրեւ անցին աւուրք
սգոյն, խօսեցաւ Յովսէփ ընդ [4]իշխանս
Փարաւոնի եւ ասէ, Եթէ գտի շնորհս
առաջի ձեր, խօսեցարուք ընդ Փարա-
5 ւոնի եւ ասացէք, Հայր իմ երդմնեցոյց
զիս եւ ասէ, Ահաւասիկ ես մեռանիմ. ի
շիրմի անդ զոր փորեցի ես ինձ յերկրին
Քանանացւոց, անդ թաղեսցես զիս. արդ
ելեալ թաղեցից զհայրն իմ, եւ եկից։
6 Եւ ասէ Փարաւոն, Ել թաղեա զհայր
քո, որպէս եւ երդմնեցոյց զքեզ։
7 Եւ ել Յովսէփ թաղել զհայր իւր. ելին
ընդ նմա եւ ամենայն ծառայք Փարա-
ւոնի, եւ ծերք տան նորա եւ ամենայն
8 ծերք երկրին Եգիպտացւոց։ Եւ ամե-
նայն համօրէն տուն Յովսեփայ եւ եղ-
բարք նորա, եւ ամենայն հայրենի բնա-
կութիւն նորա. եւ զազգատոհմ եւ զոչ-
խար եւ զարջառ թողին յերկրին ի Գե-
9 սեմ։ Ելին ընդ նմա եւ կառք եւ հեծեալք,
10 եւ եղեն բանակ մեծ յոյժ։ Եւ հասին ի
կալն Ատադայ, որ է յայնկոյս Յորդա-
նանու. եւ կոծեցան զնա անդ կոծ մեծ
եւ սաստիկ յոյժ. եւ արար հօր իւրում
11 սուգ զեւթն օր։ Տեսին բնակիչք երկրին
Քանանացւոց զսուգն ի կալն Ատադայ,
եւ ասեն, Սուգ մեծ է Եգիպտացւոց.
վասն այնորիկ կոչեաց զանուն նորա
Սուգ Եգիպտոսի, որ է յայնկոյս Յորդա-
12 նանու։ Եւ արարին նմա այնպէս որ-
դիքն Իսրայէլի, որպէս պատուիրեաց
13 նոցա։ [5]Բարձին զնա եւ թաղեցին զնա
անդ." եւ տարան զնա որդիքն իւր յեր-
կիրն Քանանացւոց, եւ թաղեցին յայ-
րին [6]կրկնում, զոր ստացաւ Աբրահամ ի
ստացուածս շիրմի յԵփրոնէ Քետացւոյ
14 յանդիման Մամբրէի։ Եւ դարձաւ Յով-
սէփ յԵգիպտոս, ինքն եւ եղբարք իւր,

[1]Եբր. բժշկաց [2]Եբր. բժիշկքն [3]Եբր. պատելոց [4]Եբր. տան [5]Յեբր. պակասէ [6]Եբր. Մաքփելայ

եւ ամենեքին որ ելեալ էին ընդ նմա
թաղել զհայրն նորա։
15 Իբրեւ տեսին եղբարքն Յովսեփայ եթէ
մեռաւ հայրն նոցա, ասեն, Գուցէ ոխս
ունիցի ընդ մեզ Յովսէփ, եւ հատու-
ցանիցէ մեզ հատուցումն զամենայն
16 չարեացն զոր անցուցաք ընդ նա։ [7]Եկին
առ Յովսէփ եւ ասեն, Հայր քո [8]երդմնե-
ցոյց զմեզ" մինչչեւ վախճանեալ էր
17 նորա, ասէ, Այսպէս ասասջիք ցՅով-
սէփ. Թողցես [9]դոցա զյանցանս եւ
զմեղս իւրեանց, զի չարիս անցուցին
ընդ քեզ. եւ արդ ներեա յանցանաց
ծառայից Աստուծոյ հօր քո։ Եւ լաց
Յովսէփ վասն բանիցն զոր խօսեցան
18 ընդ նմա։ Եւ եկեալ առ նա եղբարցն
իւրոց՝ անկան առաջի նորա եւ ասեն,
19 Ահաւասիկ մեք ծառայք քո եմք։ Եւ
ասէ ցնոսա Յովսէփ, Մի՛ երկնչիք, [10]քան-
20 զի եւ ես Աստուծոյ եմ"։ Դուք խորհե-
ցարուք զինէն ի չարութիւն, եւ Աս-
տուած խորհեցաւ [5]վասն իմ" ի բարու-
թիւն. [11]որպէս եղեւ իսկ յաւուր յայս-
միկ, [12]զի կերակրեսցի" ժողովուրդ բա-
21 զում։ Եւ ասէ ցնոսա, Մի՛ երկնչիք,
ես կերակրեցից զձեզ եւ զտունս ձեր։
Եւ մխիթարեաց զնոսա, եւ սփոփեաց
22 զսիրտս նոցա։ Եւ բնակեաց Յովսէփ յԵ-
գիպտոս, ինքն [5]եւ եղբարք իւր," եւ
ամենայն համօրէն տուն հօր իւրոյ. եւ
եկեաց Յովսէփ ամս հարեւր եւ տասն։
23 Եւ ետես Յովսէփ զորդիս Եփրեմի մին-
չեւ յերրորդ ազգ. եւ որդիք Մաքիրայ
որդւոյ Մանասէի ծնան յերանս Յովսե-
24 փայ։ Եւ խօսեցաւ Յովսէփ ընդ եղբարս
իւր եւ ասէ, Ես ահաւասիկ մեռանիմ. այ-
ցելութեամբ այց արասցէ ձեզ Աստուած,
եւ հանցէ զձեզ յերկրէս յայսմանէ յեր-
կիրն զոր երդուաւ Աստուած տալ հարցն
մերոց Աբրահամու, Իսահակայ եւ Յա-
25 կոբայ։ Եւ երդմնեցոյց Յովսէփ զորդիսն
Իսրայէլի եւ ասէ, Յայցելութեանն յո-
րում այց առնիցէ ձեզ Աստուած՝ հան-
ջիք եւ զիմ ոսկերս աստի ընդ ձեզ։
26 Եւ վախճանեցաւ Յովսէփ ամաց հա-
րեւր եւ տասանց. եւ [13]թաղեցին զնա,
եւ եդին զնա ի տապանի յԵգիպտոս։

[7]Եբր. Առաքեցին [8]Եբր. պատուիրեաց մեզ
[9]Եբր. եղբարց քոց [10]Եբր. միթէ փոխանակ
Աստուծո՞յ իցեմ ես [11]Եբր. առնել՝ որպէս
[12]Եբր. կեցուցանել [13]Եբր. պատեցին

# ԳԼՈՒԽՔ ԵԼԻՑՆ (*)



(*) Բովանդակութիւնք գլխոց պարունակեն յԵբրայականէն

# ԵԼՔ

ԳԼՈՒԽ Ա

[1]
1 ԱՅՍ են անուանք որդւոցն Իսրա-
յէլի մտելոցն յԵգիպտոս հան-
դերձ Յակոբաւ [2]հարքն իւրեանց”. իւրա-
քանչիւր ըստ համօրէն տանց իւրեանց
2 մտանէին. Ռուբէն, Շմաւոն, Ղեւի,
3 Յուդա. Իսաքար, Զաբուղոն եւ Բե-
4 նիամին. Դան եւ Նեփթաղիմ, Գադ եւ
5 Ասեր։ Եւ էին ամենայն ոգիք ելեալք [3]ի
Յակոբայ, եւթանասուն [2]եւ հինգ” ոգի.
6 եւ Յովսէփ էր յԵգիպտոս։ Վախճանե-
ցաւ Յովսէփ եւ ամենայն եղբարք նորա,
7 եւ ամենայն ազգն այն։ Եւ որդիքն Իս-
րայէլի աճեցին եւ յօրացան, բազմա-
նային եւ զօրանային յոյժ, [4]զի բազմա-
ցուցանէր զնոսա” երկիրն։
8 [5]Եկաց այլ թագաւոր” որ ոչ գիտէր
9 զՅովսէփ։ Եւ ասէ ցազգն իւր, Ահա ազգ
որդւոցն Իսրայէլի մեծ է զօրութեամբ,
10 եւ զօրանայ քան զմեզ. Արդ եկայք
հնարեսցուք ինչ նոցա, զուցէ բազմա-
նայցեն, եւ յորժամ դիպիցի մեզ պա-
տերազմ, յաւելուցուն եւ նոքա ի թշնա-
միսն, եւ մարտուցեալ ընդ մեզ՝ ելա-
11 նիցեն յերկրէ աստի։ Եւ կացոյց ի վե-
րայ նոցա գործավարս, զի չարչարեսցեն
զնոսա ի գործ. եւ շինեցին քաղաքս
[6]ամուրս Փարաւոնի, զՓիդոն եւ զՌամեսէ
12 [2]եւ զՈՎՆ՝ որ է Արեգ քաղաք”։ Եւ որչափ
ճնշէին զնոսա, այնչափ առաւել բազմա-
նային եւ զօրանային յոյժ. եւ [7]գարշե-
ցուցանէին Եգիպտացիքն զորդիսն” Իս-
13 րայէլի։ Եւ յաղթահարէին Եգիպտացիքն
14 զորդիսն Իսրայէլի բռնութեամբ։ Եւ կե-
ղէին զկեանս նոցա ի գործ խիստ կաւոյ
եւ աղիւսարկի եւ յամենայն գործ դաշ-
տաց, ըստ ամենայն գործոց իւրեանց որով
ծառայեցուցանէին զնոսա բռնութեամբ։
15 Եւ խօսեցաւ արքայն Եգիպտացւոց ընդ
ծնուցիչսն Եբրայեցւոց, ընդ միումն որում
անուն էր Սեփովրա, եւ անուն երկրոր-
16 դին Փուա, Եւ ասէ, Յորժամ ծնուցա-
նիցէք զկանայս Եբրայեցիս եւ իցեն մերձ
ի ծնունդս, թէ արու իցէ, սպանանիջիք
զնա, եւ թէ էգ՝ ապրեցուցանիջիք։
17 Եւ երկեան ծնուցիչքն յԱստուծոյ, եւ
ոչ արարին որպէս հրաման ետ նոցա
արքայն Եգիպտացւոց. եւ ապրեցուցա-
18 նէին զարուսն։ Կոչեաց արքայն Եգիպ-
տացւոց զծնուցիչսն եւ ասէ ցնոսա,
Զի՞ է զի արարէք զիրսն զայնոսիկ եւ
19 ապրեցուցէք զարուս։ Եւ ասեն ծնու-
ցիչքն ցՓարաւոն, Ոչ իբրեւ զկանայս
Եգիպտացիս են Եբրայեցիքն. քանզի
[8]նախ ծնանին” մինչչեւ մտեալ առ նոսա
20 մանկաբարձաց։ Եւ [2]ծնանէին. եւ” բա-
րի առնէր Աստուած մանկաբարձացն.
եւ բազմանայր յոյժ ժողովուրդն եւ զօ-
21 րանայր յոյժ։ Յորմէհետէ երկեան ման-
կաբարձքն յԱստուծոյ, [9]արարին իւրեանց”
22 տունս։ Հրաման ետ Փարաւոն ամենայն
ժողովրդեան իւրում, եւ ասէ, Զամե-
նայն արու որ ծնանիցի Եբրայեցւոց՝ ի
գետ ընկեսջիք, եւ զամենայն էգ ապ-
րեցուցանիջիք։

ԳԼ. Բ

1 Եւ էր անդ ոմն յազգէ Ղեւեայ, որ առ
2 իւր կին ի դստերաց անտի Ղեւեայ։ Եւ
[10]յղացաւ ծնաւ” արու, եւ [11]տեսանէին
զնա կայտառ, եւ [12]թաքուցին զնա ա-
3 միս երիս։ Եւ իբրեւ ոչ եւս [13]կարէին
թաքուցանել, առ մայրն նորա տապա-
նակ պրտուեայ, եւ ծեփեաց զնա կպրա-
ձիւթով, եւ եդ ի նմա զմանուկն, եւ
ընկէց զայն ի խաղ մի առ ափն գետոյն։
4 Եւ գիտէր քոյրն նորա ի հեռաստանէ՝
տեսանել թէ զինչ անցք անցանիցեն ընդ

[1]Եբր. Եւ այս [2]Յեբր. ղ—ֆ——ե [3]Եբր. յերա-
նաց Յակոբայ [4]Եբր. եւ լցաւ նոքօք [5]Եբր.
Եւ յարեաւ թագաւոր նոր ի վերայ Եգիպտոսի
[6]Եբր. մթերից [7]Եբր. գարշէին նոքա յորդւոցն

[8]Եբր. առոյգ են. ծնանին [9]Եբր. արար նոցա
[10]Եբր. յղացաւ կինն եւ ծնաւ [11]Եբր. ետես
[12]Եբր. թաքոյց [13]Եբր. կարէր

5 նա ։ Եւ իջեալ դուստրն Փարաւոնի
լուանալ ի գետն , եւ նաժիշտք նորա
շրջէին առ գետովն. եւ տեսեալ զտապա-
նակն ի խաղի անդ , առաքեաց զնաժիշտ
6 [1]մի առնուլ զնա . Եբաց եւ ետես զմա-
նուկն , եւ լայր մանուկն [2]ի տապանակի
անդ˝. խանդաղատեցաւ զնովաւ [2]դուստրն
Փարաւոնի˝, եւ ասէ , Ի մանկանց Եբ-
7 րայեցւոց է դա ։ Եւ ասէ քոյրն նորա
ցդուստրն Փարաւոնի , Կամի՞ս զի կոչե-
ցից քեզ կին մի դայեակ ի Հեբրայեցւոց
անտի , եւ սնուցանիցէ քեզ զմանուկդ ։
8 Ասէ դուստրն Փարաւոնի , Երթ . գնաց
9 աղջիկն եւ կոչեաց զմայր մանկանն ։ Եւ
ասէ ցնա դուստրն Փարաւոնի ։ Առ զմա-
նուկդ , եւ սնո ինձ զդա , եւ ես տաց քեզ
զվարձս քո . եւ առ կինն զմանուկն եւ
10 սնոյց զնա ։ Եւ իբրեւ հաստատեցաւ մա-
նուկն , ած զնա առ դուստրն Փարաւոնի,
եւ եղեւ նմա յորդեգիրս . եւ անուանեաց
զանուն նորա [3]Մովսէս. ասէ, Ի ջրոյ անտի
հանի զդա ։
11 Եւ եղեւ յետ աւուրց [2]բազմաց , իբրեւ
եղեւ մեծ Մովսէս , ել առ եղբարս իւր
[2]որդիսն Իսրայելի˝, հայեցեալ ի չարչա-
րանս նոցա . ետես այր մի Եգիպտացի ,
զի հարկանէր զոմն Եբրայեցի յեղբարց
12 իւրոց [2]յորդւոցն Իսրայելի ։˝ Հայեցեալ
յայս կոյս յայն կոյս՝ ոչ զոք տեսանէր ,
եհար զԵգիպտացին եւ ծածկեաց զնա
13 ընդ աւազով ։ Եւ ելեալ յերկրորդում ա-
ւուր , տեսանէր երկուս արս Եբրայեցիս
ընդ միմեանս մարտուցեալս . եւ ասէ
ցայրն որ զրկէրն , Ընդէ՞ր հարկանես
14 զընկերդ ։ Եւ նա ասէ , Ո՞ կացոյց զքեզ
այր իշխան եւ դատաւոր ի վերայ մեր .
եթէ սպանանե՞լ զիս կամիցիս որպէս
երէկ սպաներ զԵգիպտացին ։ Զահի հա-
րաւ Մովսէս եւ ասէ թէ Այնպէս յայտ-
նի եղեւ բանն ։
15 Եւ լուաւ Փարաւոն զբանն, եւ խնդրէր
սպանանել զՄովսէս . եւ փախեաւ Մով-
սէս յերեսաց Փարաւոնի , եւ բնակեաց
յերկրին Մադիամու . եւ [2]եկեալ յերկրին
Մադիամու˝ նստաւ առ ջրհորի միում ։
16 Եւ քրմին Մադիանացւոց էին դստերք
եւթն , [2]որ արածէին զխաշինս հօր իւր-
եանց ,˝ եկեալ էին հանել ջուր , մինչեւ
լցին զաւազանսն՝ արբուցանել խաշանց
17 հօրն իւրեանց ։ Եւ եկեալ [2]այլ հովիւք մեր-
ժեցին զնոսա ի բաց . յարուցեալ Մովսէս
թափեաց զնոսա, եւ [2]եհան նոցա ջուր եւ˝
18 արբոյց զխաշինս նոցա ։ Եւ եկին առ Հռա-
գուէլ հայրն իւրեանց եւ նա ասէ ցնոսա ,
19 Զի՞ է զի յարեւու եկիք այսօր ։ Եւ նո-
քա ասեն , Այր մի Եգիպտացի փրկեաց
զմեզ ի հովուաց անտի , եւ եհան ջուր
20 եւ արբոյց խաշանց մերոց ։ Եւ նա ասէ
ցդստերսն իւր, Եւ ո՞ւր է , ընդէ՞ր թողէք
զայրն. արդ կոչեցէք զնա զի կերիցէ հաց ։
21 Եւ բնակեցաւ Մովսէս առ առնն , եւ ետ
զՍեպփովրա դուստր իւր Մովսիսի կնու-
22 թեան ։ Յղացաւ կինն եւ ծնաւ որդի , եւ ա-
նուանեաց զանուն նորա Մովսէս՝ Գերսամ.
ասէ, Զի պանդուխտ եմ ես յօտար երկրի ։
23 Եւ յետ աւուրց բազմաց մեռաւ թա-
գաւորն Եգիպտացւոց. եւ տառապէին որ-
դիքն Իսրայելի ի գործոյ անտի, եւ աղա-
ղակէին ի վեր . եւ ել աղաղակ նոցա ա-
24 ռաջի Աստուծոյ ի գործոյ անտի ։ Եւ լուաւ
Աստուած հեծութեան նոցա , եւ յիշեաց
Աստուած զուխտ իւր որ ընդ Աբրահամու
25 եւ Իսահակայ եւ Յակոբայ ։ Եւ հայեցաւ
Աստուած յորդիսն Իսրայելի , եւ [4]ծանու-
ցաւ նոցա˝ ։

## ԳԼ. Գ

1 Եւ Մովսէս արածէր զխաշինս Յոթորայ
աներոյ իւրոյ՝ քրմին Մադիանացւոց . եւ
ած զխաշինսն [5]յանապատ , եւ եկն ի
2 լեառնն Աստուծոյ ի Քորեբ ։ Եւ երեւեցաւ
նմա հրեշտակ Տեառն բոցով հրոյ ի միջոյ
մորենւոյ . եւ տեսանէր զի մորենին վառ-
3 եալ էր հրով , եւ ոչ այրէր մորենին ։ Եւ
ասէ Մովսէս , Անցեալ տեսից զտեսիլն
զայն մեծ . զի՞ է զի ոչ այրիցի մորենին ։
4 Իբրեւ ետես Տէր եթէ մերձենայ տեսանել,
կոչեաց զնա [6]Տէր ի միջոյ մորենւոյն, ասէ,
Մովսէ՛ս , Մովսէ՛ս . եւ նա ասէ , [7]Զի՞ է˝ ։
5 Եւ ասէ , Մի՛ մերձենար այսր . լոյծ զկօ-
շիկս քո յոտից քոց, զի տեղիդ յորում կաս
6 դու ի դմա՝ երկիր սուրբ է ։ Եւ ասէ ցնա,
Ես եմ Աստուած հօր քո, Աստուած Աբրա-
համու եւ Աստուած Իսահակայ եւ Աս-
տուած Յակոբայ . եւ [8]դարձոյց Մովսէս
զերեսս իւր, քանզի երկնչէր հայել [9]առա-
ջի Աստուծոյ˝ ։
7 Եւ ասէ Տէր [2]ցՄովսէս, Տեսանելով տեսի

[1]Եբր. իւր [2]Յեբր. պակասէ [3]Այսինքն, հան-
եալ ի ջրոյ

[4]Եբր. ծանեաւ Աստուած [5]Եբր. յետ կոյս
անապատին [6]Եբր. Աստուած [7]Եբր Ահա-
ւասիկ եմ [8]Եբր. ծածկեաց [9]Եբր. յԱստուած

զչարչարանս ժողովրդեան իմոյ որ յԵգիպ-
տոս, եւ լուայ աղաղակի նոցա ի գործա-
վարացն իւրեանց, զի գիտեմ զվիշտս նո-
8 ցա. Եւ իջի փրկել զնոսա ի ձեռաց Ե-
գիպտացւոցն, եւ հանել զնոսա յերկրէն
յայնմանէ, եւ տանել զնոսա յերկիր բարի
եւ յընդարձակ, յերկիր՝ որ բղխէ զկաթն
եւ զմեղր. յերկիրն Քանանացւոց եւ Քե-
տացւոց եւ Ամորհացւոց եւ Փերեզացւոց
եւ Խեւացւոց [1]եւ Գերգեսացւոց" եւ Յե-
9 բուսացւոց։ Եւ արդ աւասիկ աղաղակ որդ-
ւոցն Իսրայէլի հասեալ է առ իս, եւ տեսի
ես զնեղութիւնն զոր նեղեն զնոսա Եգիպ-
10 տացիքն։ Եւ արդ եկ առաքեցից զքեզ առ
Փարաւոն [1]արքայ Եգիպտացւոց", եւ հան-
ցես զժողովուրդ իմ, զորդիսն Իսրայէլի,
11 յերկրէն Եգիպտացւոց։ Եւ ասէ Մովսէս
ցԱստուած, Ո՞վ եմ ես զի երթայցեմ առ
Փարաւոն [1]արքայ Եգիպտացւոց", եւ հա-
նիցեմ զորդիսն Իսրայէլի յերկրէն Եգիպ-
12 տացւոց։ Եւ ասէ, [2]Ես եղէց ընդ քեզ. եւ
այս եղիցի քեզ նշան թէ ես առաքեցի
[3]զքեզ հանել" զժողովուրդ իմ յԵգիպտոսէ,
պաշտեսջիք զԱստուած ի լերինս յայսմիկ։
13 Եւ ասէ Մովսէս ցԱստուած, Ահա ես
երթեալ առ որդիսն Իսրայէլի ասիցեմ ցնո-
սա, Աստուած հարցն ձերոց առաքեաց
զիս առ ձեզ. եւ հարցանիցեն զիս թէ
Զի՞նչ է անուն նորա, զի՞նչ ասացից ցնո-
14 սա։ Եւ ասէ Աստուած ցՄովսէս, Ես եմ
[1]Աստուած ՈՐ ԷՆ։ Եւ ասէ, Այսպէս ա-
սասցես ցորդիսն Իսրայէլի, ՈՐ ԷՆ առաք-
15 եաց զիս առ ձեզ։ Եւ ասէ դարձեալ Աս-
տուած ցՄովսէս, Այսպէս ասասցես ցոր-
դիսն Իսրայէլի, Տէր Աստուած հարցն ձե-
րոց, Աստուած Աբրահամու եւ Աստուած
Իսահակայ եւ Աստուած Յակոբայ, առաք-
եաց զիս առ ձեզ. այս է անուն իմ յաւի-
տենական, եւ յիշատակ ազգաց յազգս։
16 Արդ երթեալ ժողովեսցես զծերակոյտ որդ-
ւոցն Իսրայէլի, եւ ասասցես ցնոսա, Տէր
Աստուած հարցն ձերոց երեւեցաւ ինձ,
Աստուած Աբրահամու եւ Աստուած Իսա-
հակայ եւ Աստուած Յակոբայ եւ ասէ,
Այցելութեամբ այց արարի ձեզ, եւ որ ինչ
17 անցք անցին ընդ ձեզ յԵգիպտոս։ Եւ ա-
սեմ, Հանից զձեզ յերկրէ չարչարանաց
Եգիպտացւոցն՝ յերկիրն Քանանացւոց եւ
Քետացւոց եւ Ամորհացւոց եւ Փերե-
զացւոց [1]եւ Գերգեսացւոց" եւ Խեւացւոց

[1]Յեբր. պակասէ [2]Եբր. Ապաքէն ես [3]Եբր. զքեզ. յորժամ հանցես

եւ Յեբուսացւոց, յերկիր՝ որ բղխէ զկաթն
18 եւ զմեղր։ Եւ լուիցեն ձայնի քում. եւ
մտցես դու եւ ծերակոյտ որդւոցն Իսրա-
յէլի առ Փարաւոն արքայ Եգիպտացւոց,
եւ ասասցես ցնա, Տէր Աստուած Եբրա-
յեցւոց [4]կոչէ զմեզ առ ինքն". արդ երթի-
ցուք մեք երից աւուրց ճանապարհ յանա-
պատ, զի զոհեսցուք Տեառն Աստուծոյ
19 մերում։ Եւ ես գիտեմ, եթէ ոչ թողուցու
զձեզ արքայն Եգիպտացւոց գնալ, եթէ
20 ոչ հզօր ձեռամբ։ Եւ ձգեալ զձեռն իմ հա-
րից զԵգիպտոս ամենայն սքանչելեօք ի-
մովք զոր արարից ի նոսա. եւ ապա ար-
21 ձակեսցէ զձեզ։ Եւ տաց շնորհս ժողովր-
դեանն իմոյ առաջի Եգիպտացւոցն. եւ յոր-
ժամ ելանիցէք, մի՛ ելանիցէք դատարկք.
22 Այլ խնդրեսցէ կին ի դրացւոյ եւ յեր-
դակցէ իւրմէ անօթս ոսկւոյ եւ անօթս
արծաթոյ եւ հանդերձս, եւ զարդարե-
ջիք զուստերս եւ զդստերս ձեր. եւ
[5]զաւաճանեսջիք զԵգիպտացիսն։

## ԳԼ. Դ

1 Պատասխանի ետ Մովսէս եւ ասէ, Ե-
թէ ոչ հաւատայցեն ինձ, եւ ոչ լուիցեն
ձայնի իմում. քանզի ասիցեն թէ չիք
երեւեալ քեզ [6]Աստուծոյ, զի՞նչ ասացից
2 ցնոսա" Ասէ ցնա Տէր, Զի՞նչ է այդ որ
ի ձեռին քում է. եւ նա ասէ, Գաւա-
3 զան։ Եւ ասէ, Ընկեա զդա ի գետին.
եւ ընկէց զնա ի գետին, եւ եղեւ օձ,
4 եւ փախեաւ Մովսէս ի նմանէն։ Եւ ասէ
Տէր ցՄովսէս, Ձգեա զձեռն քո եւ բուռն
հար զտտամնէն. եւ ձգեաց զձեռն իւր
եւ բուռն եհար զտտամնէն, եւ եղեւ գա-
5 ւազան ի ձեռին նորա. Զի հաւատասցեն
քեզ թէ երեւեալ է քեզ Տէր Աստուած
հարցն նոցա, Աստուած Աբրահամու եւ Աս-
տուած Իսահակայ եւ Աստուած Յակոբայ։
6 Ասէ ցնա դարձեալ Տէր, Արկ զձեռն
քո ի ծոց քո. եւ արկ զձեռն իւր ի ծոց
իւր, եւ եհան զնա ի ծոցոյ իւրմէ, եւ
եղեւ ձեռն նորա բորոտ իբրեւ զձիւն։
7 Եւ ասէ, Արկ զձեռն քո ի ծոց քո. եւ
արկ զձեռն իւր ի ծոց իւր, եւ եհան զնա
ի ծոցոյ իւրմէ, եւ դարձեալ անդրէն ի նոյն
8 հաստատեցաւ ի գոյն մարմնոյ իւրոյ։ Եթէ
ոչ հաւատայցեն քեզ եւ ոչ լուիցեն ձայ-
նի առաջնոյ նշանին, հաւատասցեն քեզ

[4]Եբր. պատահեաց մեզ [5]Եբր. կողոպտեսջիք
[6]Եբր. Տեառն

9 ձայնի երկրորդի նշանիդ ։ Եւ եղիցի նթէ
ոչ հաւատասցեն երկոցունց նշանացդ
այդոցիկ, եւ ոչ լուիցեն ձայնի քում, առ-
ցես դու ի ջրոյ գետոյն եւ հեղցես ի ցա-
մաքի, եւ եղիցի ջուրն զոր առնուցուս ի
գետոյ անտի՝ արիւն ի ցամաքին ։
10 Եւ ասէ Մովսէս ցՏէր, Աղաչեմ զքեզ,
Տէր, չեմ [1]բաւական, որպէս թէ՛՛ յերիկէ
եւ յեռանդէ, եւ ոչ յորմէ հետէ սկսար խօ-
սել ընդ ծառայի քում. զի նրբաձայն եւ
11 ծանրալեզու եմ ես։ Եւ ասէ Տէր ցՄովսէս,
Ո՞վ ետ բերան մարդոյ, կամ ո՞վ արար
զխուլն եւ զհամր, զականին եւ զկոյր.
12 ո՞չ ապաքէն ես [2]Աստուած ։ Եւ արդ երթ,
եւ ես բացից զբերան քո եւ խելամուտ ա-
13 րարից զքեզ զոր պարտ իցէ խօսել ։ Եւ
ասէ, Աղաչեմ զքեզ, Տէր, առ քեզ ի ձեռն
14 զայլ ոք [3]զօրաւոր զոր առաքիցես ։ Եւ
բարկացաւ Տէր սրտմտութեամբ ի վերայ
Մովսիսի եւ ասէ, Ո՞չ աւանիկ կայ Ահա-
րոն եղբայր քո Ղեւտացի. գիտեմ զի խօ-
սելով խօսեսցի նա [3]ընդ քեզ՛՛. եւ ահա նա
ելցէ ընդ առաջ քո, եւ ի տեսանելն զքեզ
15 բերկրեսցի ի միտս իւր։ Եւ խօսեսցիս ընդ
նմա, եւ տացես զպատգամս իմ ի բերան
նորա. եւ ես բացից զբերան քո եւ զբե-
րան նորա, եւ խելամուտ արարից զձեզ
16 զինչ առնիցէք։ Եւ նա խօսեսցի առ ի քէն
ընդ ժողովրդեանն. եւ նա եղիցի քո բե-
րան, եւ դու եղիցես նմա յաստուածա-
17 կոյս կողմանէ ։ Եւ զգաւազանդ [3]որ դար-
ձաւ յօձ՛՛ առցես ի ձեռին քում, որով ա-
րասցես նշանս ։
18 Գնաց Մովսէս եւ դարձաւ առ Յոթոր
աներ իւր եւ ասէ ցնա, Դարձայց եւ եր-
թայց առ եղբարս իմ որ յԵգիպտոս, եւ
տեսից թէ տակաւին կենդանի՞ իցեն. եւ
19 ասէ Յոթոր ցՄովսէս, Ողջ երթ ։ Եւ [3]յետ
աւուրցն բազմաց այնոցիկ վախճանեցաւ
արքայն Եգիպտացւոց. եւ՛՛ ասէ Տէր ցՄով-
սէս ի Մադիամ, Գնա եւ երթ յԵգիպտոս,
զի մեռան ամենայն արք որ խնդրէին
20 զանձն քո ։ Եւ առեալ Մովսիսի զկին իւր
եւ զմանկունս իւր, եւ եհան զնոսա ի
գրաստս, եւ դարձաւ յԵգիպտոս. առ Մով-
սէս զգաւազանն որ յԱստուծոյ՝ ի ձեռին
21 իւրում։ Եւ ասէ Տէր ցՄովսէս, Յերթալդ
քում եւ ի դառնալդ յԵգիպտոս՝ տեսջիր
զամենայն նշանս զոր ետու ի ձեռս քո, ա-
րասցես առաջի Փարաւոնի. եւ ես խստա-
ցուցից զսիրտ նորա, եւ ոչ արձակեսցէ
22 զժողովուրդն։ Եւ դու ասասցես ցՓարա-
ւոն, Այսպէս ասէ Տէր, Որդի անդրանիկ
23 իմ Իսրայէլ ։ Ասացի ցքեզ, Արձակեա
[4]զժողովուրդ իմ, զի պաշտեսցեն՛՛ զիս.
ապա թէ ոչ կամիցիս արձակել զդա, ես
եմ ապաքէն որ սպանանիցեմ զորդի քո
զանդրանիկ ։
24 Եւ եղեւ ի ճանապարհի յիջավանս,
պատահեաց նմա [5]հրեշտակ Տեառն՛՛ եւ
25 խնդրէր սպանանել զնա։ Եւ առեալ Սեպ-
փովրայի գայլախազ՝ թլփատեաց զան-
թլփատութիւն որդւոյն իւրոյ. եւ [6]անկ-
եալ առ ոտս նորա ասէ, Ահա եկաց ար-
26 իւն թլփատութեան մանկան իմոյ՛՛։ Եւ
[7]գնաց հրեշտակն ի նմանէ՛՛. քանզի ասաց
նթէ [8]Եկաց արիւն թլփատութեան ման-
կան իմոյ՛՛։
27 Եւ ասէ Տէր ցԱհարոն, Երթ ընդ առաջ
Մովսիսի յանապատն. եւ գնաց եւ պա-
տահեաց նմա ի լերինն Աստուծոյ, եւ համ-
28 բուրեաց զնա ։ Եւ պատմեաց Մովսէս Ա-
հարոնի զամենայն պատգամս Տեառն որ
առաքեաց զնա, եւ զամենայն զնշանսն
զոր պատուիրեաց նմա ։
29 Գնացին Մովսէս եւ Ահարոն եւ ժողո-
վեցին զամենայն ծերակոյտ որդւոցն Իս-
30 րայելի։ Եւ խօսեցաւ Ահարոն զամենայն
պատգամսն զոր խօսեցաւ Տէր ընդ Մով-
սիսի. եւ արար նշանս առաջի ժողովր-
31 դեանն։ Եւ հաւատաց ժողովուրդն եւ ու-
րախ եղեւ, զի արար [5]Աստուած այց որդ-
ւոցն Իսրայելի, եւ զի հայեցաւ ի նեղու-
թիւն նոցա. խոնարհեցաւ ժողովուրդն եւ
երկիր եպագ ։

Գլ. Ե

1 Եւ ապա մտին Մովսէս եւ Ահարոն առա-
ջի Փարաւոնի եւ ասեն ցնա, Այսպէս ասէ
Տէր Աստուած Իսրայելի, Արձակեա զժո-
ղովուրդ իմ, զի արասցեն ինձ տօն յանա-
2 պատի ։ Եւ ասէ Փարաւոն, Ո՞վ է [5]նա,
որում լուայց ձայնի նորա արձակել զոր-
դիսն Իսրայելի. ոչ գիտեմ զՏէրն, եւ
3 զԻսրայէլ ոչ արձակեմ։ Եւ ասեն ցնա,
Աստուածն Եբրայեցւոց [9]կոչեաց զմեզ առ

---

[1] Եբր. այր խօսող, ոչ զօրաւոր [2] Եբր. Տէր [3] Յեբր.

[4] Եբր. զորդի իմ զի պաշտեսցէ [5] Եբր. Տէր
[6] Եբր. մերձեցոյց յոտս նորա եւ ասէ, Արդարեւ փեսայ արեան ես դու ինձ [7] Եբր. եթող զնա
[8] Եբր. Փեսայ արեան ես դու ինձ վասն թլփատութեան [9] Եբր. պատահեաց մեզ

ինքն". արդ երթիցուք երից աւուրց ճանա-
պարհ յանապատ, զի զոհեսցուք Տեառն
Աստուծոյ մերում. գուցէ պատահիցէ մեզ
4 մահ կամ սպանումն ։ Եւ ասէ ցնոսա ար-
քայն Եգիպտացւոց, Ընդէ՞ր [1]դու, Մով-
սէս եւ Ահարոն, խափանէք զժողովուրդն
ի գործոյ իւրեանց. երթայք յիւրաքան-
5 չիւր գործ իւր ։ Եւ ասէ Փարաւոն, Ահա
բազմանայ յոյժ ժողովուրդն յերկրիս. արդ
մի՛ հանգարտեցուսցուք զնոսա ի գործոյ ։
6 Եւ հրամայեաց Փարաւոն յաւուր յայն-
միկ գործավարաց ժողովրդեանն եւ դպրաց
7 նորա. ասէ, Մի՛ եւս յաւելուցուք տալ
յարդ ժողովրդեանն յաղիւսարկութիւն
որպէս յերէկն եւ յեռանդ. ինքեանք եր-
8 թիցեն եւ ժողովեսցեն իւրեանց յարդ։ Եւ
զսակ զաղիւսարկլին որպէս գործէին հա-
նապազ, արկէք ի վերայ նոցա. մի՛ հա-
սանիցէք ինչ անտի. զի դատարկացան եւ
վասն այնորիկ աղաղակեն եւ ասեն, Եր-
թիցուք զոհեսցուք Աստուծոյ մերում ։
9 Ծանրասցի գործ մարդկանն, եւ այնմ հո-
գասցեն, եւ մի՛ հոգասցեն ի բանս սարա-
10 պարտս։ Եւ ստիպէին զնոսա գործավարք
ժողովրդեանն եւ դպիրք նորա, եւ խօ-
սէին ընդ ժողովրդեանն եւ ասէին, Այս-
պէս ասէ Փարաւոն, Ոչ եւս տաց ձեզ յարդ.
11 Դուք ձեզէն երթայք ժողովեցէք ձեզ յարդ
ուստի՛ եւ գտանիցէք. զի ոչ թողացի ձեզ
12 ի սակէն ձերմէ եւ ոչ ինչ ։ Եւ սփռեցաւ
ժողովուրդն ընդ ամենայն երկիրն Եգիպ-
13 տացւոց ժողովել եղէգն առ ի յարդ ։ Եւ
գործավարքն ստիպէին զնոսա եւ ասէին,
Բովանդակեցէք զգործն ձեր ըստ հանա-
պազորդ սակին, որպէս մինչ յարդն տային
14 ձեզ։ Եւ տանջեցան դպիրք ազգի որդւոցն
Իսրայէլի որ կային ի վերայ նոցա՝ ի վե-
րակացուացն Փարաւոնի, զի ասէին, թէ
Ընդէ՞ր ոչ բովանդակեցէք զսակ աղիւսոյն
ձերոյ որպէս [2]յերէկն եւ յեռանդ՝ եւ զայսր
աւուրդ"։
15 Եւ մտեալ դպրաց որդւոցն Իսրայէլի՝
բողոք կալան առաջի Փարաւոնի եւ ա-
սեն, Ընդէ՞ր առնես այսպէս ընդ ծառայս
16 քո ։ Յարդ ոչ տան ծառայից քոց, եւ զա-
ղիւսն հրամայեն մեզ գործել. եւ ահա
ծառայք քո ի տանջանս են. [3]բուռն առ-
17 նես ժողովրդեան քում"։ Եւ ասէ ցնոսա,
Դատարկ էք, պարապորդ էք. վասն այ-
նորիկ ասէք, Երթիցուք զոհեսցուք [4]Աս-

[1]Յեբր. դու—ք   [2]Եբր. յեռանդն, երէկ և այսօր եւս
[3]Եբր. և ժողովրդեան քո է վնաս   [4]Եբր. Տեառն

18 տուծոյ մերում"։ Արդ երթայք գործեցէք,
քանզի յարդ ոչ ոք տայ ձեզ, եւ զսակ ա-
19 ղիւսոյն բովանդակ տայցէք ։ Տեսանէին
դպիրքն որդւոցն Իսրայէլի զանձինս իւր-
եանց [5]ի չարչարանս եւ ասէին, Ոչ ոք թո-
ղու մեզ զսակ հանապազորդ աղիւսա-
20 թուլին"։ Պատահեցին Մովսիսի եւ Ահա-
րոնի, զի գային հանդէպ նոցա՝ ելեալք
21 յերեսաց Փարաւոնի. Եւ ասեն ցնոսա,
Տեսցէ [6]Աստուած եւ դատեսցի զձեզ. զի
գարշեցուցէք զհոտ մեր առաջի Փարա-
ւոնի եւ առաջի ծառայից նորա, տալ սուր
ի ձեռս նորա կոտորել զմեզ ։
22 Դարձաւ Մովսէս առ Տէր եւ ասէ, Տէր,
ընդէ՞ր չարչարեցեր զժողովուրդն քո,
23 եւ ընդէ՞ր առաքեցեր զիս։ Եւ յորմէ հետէ
մտի առ Փարաւոն խօսել յանուն քո
չարչարեաց զժողովուրդն, եւ փրկելով,
ոչ փրկեցեր զժողովուրդ քո ։

## Գլ. Զ

1 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Այժմ տեսցես զինչ
արարից ընդ Փարաւոն. զի հզօր ձեռամբ
արձակեսցէ զդոսա, եւ բարձրացեալ բազ-
2 կաւ հանցէ զդոսա յերկրէ իւրմէ ։ Խօսե-
ցաւ Աստուած ընդ Մովսիսի եւ ասէ ցնա,
3 Ես եմ Տէր. Եւ երեւեցայ Աբրահամու եւ
Իսահակայ եւ [7]Յակոբայ. Աստուած նոցա
եմ, եւ անուն իմ՝ Տէր, եւ ոչ յայտնեցի
4 նոցա"։ Եւ հաստատեցի զուխտ իմ առ նո-
սա, տալ նոցա զերկիրն Քանանացւոց,
5 [8]ուր պանդխտեցանն։ Եւ ես լուայ հեծու-
թեան որդւոցդ Իսրայէլի զոր Եգիպտա-
ցիքդ ծառայեցուցանեն, եւ յիշեցի զուխտն
6 իմ ։ Երթ խօսեաց ընդ որդիսն Իսրայէլի,
եւ ասասցես, Ես եմ Տէր. եւ հանից զձեզ
ի բռնութենէ Եգիպտացւոցդ, եւ փրկեցից
զձեզ ի ծառայութենէ դոցա, եւ ապրե-
ցուցից զձեզ բարձր բազկաւ եւ մեծամեծ
7 դատաստանօք ։ Եւ առից զձեզ ինձ ի ժո-
ղովուրդ, եւ եղէց ձեզ Աստուած. եւ ծա-
նիջիք թէ ես եմ Տէր Աստուած ձեր, որ
հանեմ զձեզ ի բռնութենէ Եգիպտացւոցդ։
8 Եւ տարայց զձեզ յերկիրն յոր ձգեցի զձեռն
իմ տալ զնա Աբրահամու, Իսահակայ եւ
Յակոբայ, եւ տաց զնա ձեզ [9]վիճակաւ.

[5]Եբր. ի չարչարանս, իբրեւ ասացաւ եթէ Ոչ նուազեսցի ի հանապազորդ աղիւսաթուէն ձերմէ
[6]Եբր. Տէր   [7]Եբր. Յակոբայ յանուն Աստուծոյ Ամենակալի, և ոչ յայտնեցայ նոցա յանուն իմ Եհովայ (Տէր)   [8]Եբր. զերկիր պանդխտութեան նոցա ուր   [9]Եբր. ի վիճակ, կամ, ի ժառանգութիւն

9 զի ես եմ Տէր ։ Խօսեցաւ Մովսէս այնպէս
ընդ որդիսն Իսրայէլի. եւ ոչ անսացին նմա
ի կարճմտութենէ եւ ի խիստ գործոյն ։
10 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ ,
11 Մուտ խօսեաց ընդ Փարաւոնի արքային
Եգիպտացւոց , զի արձակեսցէ զորդիսն
12 Իսրայէլի յերկրէն [1]Եգիպտացւոց ։ Խօսե-
ցաւ Մովսէս առաջի Տեառն եւ ասէ, Ահա
որդիքն Իսրայէլի ոչ լուան ինձ, եւ զիա՞րդ
լուիցէ ինձ Փարաւոն . եւ ես [2]չեմ խօսող
13 ոք"։ Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
ընդ Ահարոնի , եւ ետ նոցա հրաման առ
որդիսն Իսրայէլի եւ առ Փարաւոն արքայ
Եգիպտացւոց , հանել զորդիսն Իսրայէլի
յերկրէն Եգիպտացւոց ։
14 Եւ այս են նահապետք տանց ազգաց
նոցա . որդիք Ռուբենի անդրանկանն Իս-
րայէլի՝ Ենոք եւ Փալլուս , Ասրոն եւ
15 Քարմի . այս ցեղ Ռուբենի է ։ Եւ որդիք
Շմաւոնի՝ Յամուէլ եւ Յամին եւ Ահովդ եւ
Յաքին եւ Սահառ եւ Սաւուղ [3]որ ի Փիւ-
նիկեցւոց անտի էր". այս ցեղք են որդւոցն
16 Շմաւոնի ։ Եւ այս անուանք են որդւոցն
Ղեւեայ ըստ ազգս իւրեանց . Գերսոն ,
Կահաթ եւ Մերարի։ Եւ ամք կենաց Ղեւ-
17 եայ հարեւր երեսուն եւ եւթն ամ։ Եւ այս
են որդիք Գերսոնի՝ Լոբենի եւ Սեմէի ,
18 տունք նահապետաց նոցա։ Եւ որդիք Կա-
հաթու՝ Ամրամ եւ Սահառ եւ Քեբրոն եւ
Ոզիէլ։ Եւ ամք կենաց Կահաթու՝ հարեւր
19 երեսուն եւ երեք ամ։ Եւ որդիք Մերար-
եայ՝ Մոոլի եւ Մուսի . այս են տունք
նահապետաց Ղեւեայ ըստ ազգաց իւր-
20 եանց։ Եւ առ Ամրամ զՅովքաբէթ [4]դուստր
եղբօր" հօր իւրոյ իւր կնութեան, եւ ծնաւ
նմա զԱհարոն, եւ զՄովսէս [5]եւ զՄարիամ
քոյր նոցա"։ Եւ ամք կենաց Ամրամայ հա-
21 րեւր երեսուն եւ եւթն ամ։ Եւ որդիք Սա-
22 հառայ՝ Կորխ եւ Նափեգ եւ Զեքրի ։ Եւ
որդիք Ոզիելայ՝ Միսայէլ եւ Եղիսափան
23 եւ Սեթրի ։ Եւ առ Ահարոն զԵղիսաբէթ
դուստր Ամինադաբայ զքոյր Նաասոնի իւր
կնութեան , եւ ծնաւ նմա [6]զՆաբադ եւ
24 զԱբիուդ եւ զԵղիազար եւ զԻթամար։ Եւ
որդիք Կորխայ՝ Ասիր եւ Եղկանա եւ Աբիա-
25 սափ . սոքա են ազգք Կորխայ։ Եւ Եղիա-
զար Ահարոնեան առ ի դստերաց անտի
Փուտիելի իւր կնութեան , եւ ծնաւ նմա
զՓենէէս . այս են իշխանք նահապետաց
Ղեւտացւոյն ըստ ազգս իւրեանց ։
26 Եւ այս Ահարոն եւ Մովսէս, ցորս ասաց
[7]Աստուած հանել զորդիսն Իսրայէլի յերկ-
րէն Եգիպտացւոց հանդերձ զօրութեամբ
27 իւրեանց։ Եւ սոքա են որ վիճէին ընդ Փա-
րաւոնի արքային Եգիպտացւոց , հանել
զորդիսն Իսրայէլի յԵգիպտոսէ, այս Մով-
28 սէս եւ Ահարոն ։ Յաւուր յորում խօսե-
ցաւ Տէր ընդ Մովսիսի յերկրին Եգիպ-
29 տացւոց ։ Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի
եւ ասէ, Ես եմ Տէր. խօսեաց ընդ Փարա-
ւոնի արքային Եգիպտացւոց զամենայն
30 ինչ զոր ասեմ քեզ ։ Եւ ասէ Մովսէս ա-
ռաջի Տեառն , Ահաւասիկ ես [2]նրբաձայն
եմ", եւ զիա՞րդ լուիցէ ինձ Փարաւոն ։

Գլ . Է

1 Եւ ասէ Տէր ցՄովսէս , Ահա ետու զքեզ
աստուած Փարաւոնի, եւ Ահարոն եղբայր
2 քո եղիցի քեզ մարգարէ ։ Դու խօսեսցիս
ընդ նմա զամենայն ինչ զոր պատուիրեմ
քեզ, եւ Ահարոն եղբայր քո խօսեսցի ընդ
Փարաւոնի , արձակել զորդիսն Իսրայէլի
3 յերկրէ իւրմէ։ Եւ ես խստացուցից զսիրտն
Փարաւոնի, եւ յաճախեցից զնշանս իմ եւ
4 զարուեստս յերկրին Եգիպտացւոց։ Եւ ոչ
լուիցէ ձեզ Փարաւոն . եւ արկից զձեռն
իմ յԵգիպտոս, եւ հանից [8]հանդերձ զօրու-
թեամբ իմով" զժողովուրդ իմ , զորդիսն
Իսրայէլի , յերկրէն Եգիպտացւոց , մեծաւ
5 վրէժխնդրութեամբ ։ Եւ ծանիցեն Եգիպ-
տացիքն, թէ ես եմ Տէր. եւ ձգեցից զձեռն
իմ յԵգիպտոս , եւ հանից զորդիսն Իսրա-
6 յէլի ի միջոյ նոցա։ Եւ արարին Մովսէս եւ
Ահարոն , որպէս եւ պատուիրեաց նոցա
7 Տէր , նոյնպէս եւ արարին։ Եւ Մովսէս էր
ամաց ութսնից , եւ Ահարոն էր որդի ա-
մաց ութսուն եւ երից , յորժամ խօսեցան
ընդ Փարաւոնի ։
8 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ
9 Ահարոնի եւ ասէ , Եթէ խօսեսցի ընդ ձեզ
Փարաւոն եւ ասասցէ , Տուք մեզ նշան
կամ արուեստ , ասասցես ցԱհարոն [5]եղ-
բայր քո", Առ դու զգաւազանդ, եւ ընկեա
զդա ի գետին առաջի Փարաւոնի [5]եւ ծա-
10 ռայից նորա", եւ եղիցի վիշապ ։ Մտին
Մովսէս եւ Ահարոն առաջի Փարաւոնի ,
եւ արարին այնպէս, որպէս պատուիրեաց
նոցա Տէր. եւ ընկէց Ահարոն զգաւազանն

[1]Եբր. իւրմէ [2]Եբր. անթլփատ եմ շրթամբք
[3]Եբր. որդի կնոջ Քանանացւոյ [4]Եբր. զքոյր
[5]Յեբր. պակասէ [6]Եբրայեցին ունի Նադաբ [illegible] Հայն ընթեռնու միշտ Նաբադ

[7]Եբր. Տէր [8]Եբր. զզօրս իմ,

առաջի Փարաւոնի եւ առաջի ծառայից
11 նորա , եւ եղեւ վիշապ ։ Եւ կոչեաց Փա-
րաւոն զիմաստունս [1]Եգիպտացւոց եւ
զկախարդս . եւ արարին դէտքն Եգիպ-
տացւոց կախարդութեամբ իւրեանց նոյն-
12 պէս ։ Եւ ընկէց իւրաքանչիւր ոք զգաւա-
զան իւր եւ եղեն վիշապք . եւ եկուլ գա-
13 ւազանն Ահարոնի զգաւազանս նոցա ։ Եւ
կարծրացաւ սիրտն Փարաւոնի, եւ ոչ
լուաւ նոցա , որպէս խօսեցաւ Տէր ։
14 Եւ ասէ Տէր ցՄովսէս , Ծանրացեալ է
սիրտն Փարաւոնի չարձակել զժողովուրդն ։
15 Երթ առ Փարաւոն ընդ առաւօտն . ահա
նա ելանէ ի ջուրն . եւ կացցես հանդէպ
նորա առ եզեր գետոյն , եւ զգաւազանն
16 որ դարձաւ յօձ առցես ի ձեռին քում, Եւ
ասասցես ցնա , Տէր Աստուած Եբրայեց-
ւոց առաքեաց զիս առ քեզ եւ ասէ , Ար-
ձակեա զժողովուրդ իմ զի պաշտեսցեն զիս
յանապատի. եւ ահա ոչ լուար ինձ մինչեւ
17 ցայժմ։ Այսպէս ասէ Տէր, Այդու գիտաս-
ցես թէ ես եմ Տէր. ահաւասիկ ես հարկա-
նեմ գաւազանաւս որ ի ձեռին իմում է
18 զջուր գետոյդ , եւ դարձցի յարիւն . Եւ
ձկունք որ ի գետ այդր են՝ սատակեսցին,
եւ նեխեսցի գետդ . եւ ոչ կարասցեն Ե-
գիպտացիք ըմպել ջուր ի գետոյ այտի ։
19 Եւ ասէ Տէր ցՄովսէս , Ասա ցԱհարոն,
Առ զգաւազանդ եւ ձգեա զձեռն քո ի վե-
րայ ջրոցդ [2]Եգիպտոսի եւ ի վերայ" գետոց
նոցա եւ ի վերայ լճաց նոցա եւ ի վերայ
խաղից նոցա եւ ի վերայ ջրակուտաց նո-
ցա , եւ եղիցի արիւն ։ Եւ [3]եղեւ արիւն
յամենայն երկրին Եգիպտացւոց, ի փայտս
20 եւ ի քարինս ։ Եւ արարին այնպէս Մով-
սէս եւ Ահարոն որպէս եւ պատուիրեաց
նոցա Տէր . եւ վերացուցեալ զգաւազանն
իւր՝ եհար զջուր գետոյն առաջի Փարա-
ւոնի եւ առաջի ծառայից նորա , եւ դար-
21 ձոյց զամենայն ջուրս գետոյն յարիւն։ Եւ
ձկունք որ ի գետ անդր էին՝ սատակեցան,
եւ նեխեցաւ գետն, եւ ոչ կարէին Եգիպ-
տացիքն ըմպել ջուր ի գետոյ անտի. եւ էր
արիւն յամենայն երկրին Եգիպտացւոց ։
22 Եւ արարին այնպէս եւ դէտքն Եգիպ-
տացւոց կախարդութեամբն իւրեանց, եւ
խստացաւ սիրտն Փարաւոնի եւ ոչ լուաւ
23 նոցա, որպէս ասաց Տէր։ Դարձաւ Փարա-
ւոն եւ եմուտ ի տուն իւր, եւ ոչ հաստա-
24 տեաց զմիտս իւր եւ ոչ այնու եւս։ Եւ փո-
րեցին ամենայն Եգիպտացիքն շուրջ զգե-
տովն ջուր ըմպելոյ, [4]եւ ոչ կարէին ըմպել
25 ջուր ի գետոյ անտի ։ Եւ լցան աւուրք
եւթն յետ հարկանելոյ Տեառն զգետն ։

ԳԼ. Ը

1 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Մուտ առ Փարա-
ւոն եւ ասասցես ցնա , Այսպէս ասէ Տէր,
Արձակեա զժողովուրդ իմ, զի պաշտեսցեն
2 զիս ։ Ապա թէ ոչ կամիս դու արձակել ,
ահա ես հարից զամենայն սահմանս քո
3 գորտիւ։ Եւ բղխեսցէ գետդ գորտ , եւ ել-
եալ մտանիցեն ի տունս քո եւ [5]ի շտեմա-
րանս սենեկաց քոց" եւ ի գահոյս քո , եւ
ի տունս ծառայից քոց եւ ժողովրդեան
քո , եւ ի թոնիրս քո եւ ի զանգուածս քո։
4 Եւ ի վերայ քո , եւ ի վերայ ժողովրդեան
քո , եւ ի վերայ ծառայից քոց ելանիցեն
գորտք ։
5 Եւ ասէ Տէր ցՄովսէս , Ասա ցԱհարոն
եղբայր քո, Ձգեա ձեռամբ քով զգաւա-
զանդ քո ի վերայ գետոյն եւ ի վերայ ջրա-
դարձից եւ ի վերայ խաղից , եւ հանցես
6 զորտ ի վերայ երկրիդ Եգիպտացւոց ։ Եւ
ձգեաց Ահարոն զձեռն իւր ի վերայ ջրոցն
Եգիպտացւոց, եւ [1]եհան զորտ". ել գորտն
7 եւ ծածկեաց զերկիրն Եգիպտացւոց ։ Ա-
րարին նոյնպէս եւ դէտքն Եգիպտացւոց
կախարդութեամբքն իւրեանց եւ հանին
գորտ յերկրին Եգիպտացւոց ։
8 Կոչեաց Փարաւոն զՄովսէս եւ զԱհա-
րոն եւ ասէ, Աղօթս արարէք առ Տէր, եւ
ի բաց արասցէ զգորտս յինէն եւ ի ժողո-
վրդենէ իմմէ , եւ արձակեցից զժողո-
9 վուրդդ , եւ զոհեսցեն Տեառն ։ Եւ ասէ
Մովսէս ցՓարաւոն , Ժամ դիր ինձ , առ
ե՞րբ արարից աղօթս վասն քո եւ ծառայից
քոց եւ ժողովրդեան քո, սատակել զգորտդ
ի քէն եւ [6]ի ժողովրդենէ քումմէ եւ ի
տանց ձերոց", բայց միայն ի գետ անդր
10 մնասցեն։ Եւ նա ասէ, Առ վաղիւ ։ Եւ սա
ասէ, Որպէս ասացեր եղիցի. զի գիտաս-
ցես եթէ չիք [7]այլ ոք բաց ի Տեառնէ Աս-
11 տուծոյ մերմէ", Եւ բարձցին գորտքդ ի
քէն եւ ի տանց քոց , եւ ի ծառայից քոց
եւ ի ժողովրդենէ քումմէ , բայց միայն ի
12 գետ անդր մնասցեն ։ Եւ ելին Մովսէս եւ
Ահարոն ի Փարաւոնէ , եւ աղաղակեաց

[1]Եբր. դ—ւ—ե [2]Եբր. Եգիպտացւոց. ի վերայ [3]Եբր. եղիցի

[4]Եբր. զի [5]Եբր. ի սենեակ անկողնոյ քո [6]Եբր. ի տանց քոց [7]Եբր. իբրեւ զՏէր Աստուած մեր

Մովսէս առ Տէր վասն [1]ժամադրութեան
գորտոյն, որպէս ժամադիր եղեւ" Փա-
13 րաւոնի։ Եւ արար Տէր որպէս եւ ասացն
Մովսէս. եւ սատակեցաւ գորտն ի տանց
14 եւ ի սրահից եւ յանդոց։ Եւ ժողովեցին
զնոսա կոյտս կոյտս, եւ նեխեցաւ երկիրն։
15 Իբրեւ ետես Փարաւոն եթէ եղեւ զիջու-
թիւն, ծանրացաւ սիրտ նորա եւ ոչ լուաւ
նոցա, որպէս եւ խօսեցաւ Տէր։
16 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ասա ցԱհարոն,
թէ Ձգեա [2]ձեռամբ քով" զգաւազանդ եւ
հար զհող երկրիդ. եւ եղիցի մուն [2]ի մարդ
եւ յանասուն, եւ" յամենայն երկրիդ Ե-
17 գիպտացւոց։ Եւ արարին այնպէս. ձգեաց
Ահարոն ձեռամբ իւրով զգաւազանն եւ
եհար զհող երկրին, եւ եղեւ մուն ի մարդ
եւ յանասուն, [3]եւ յամենայն հող" երկրին
18 Եգիպտացւոց։ Արարին նոյնպէս եւ գէտքն
կախարդութեամբքն իւրեանց հանել մուն,
եւ ոչ կարէին. եւ եղեւ մուն ի մարդ եւ
19 յանասուն։ Եւ ասեն գէտքն ցՓարաւոն,
Մատն Աստուծոյ է այդ. եւ խստացաւ
սիրտն Փարաւոնի, եւ ոչ լուաւ նոցա, որ-
պէս եւ խօսեցաւ Տէր։
20 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Կանխեա ընդ
առաւօտն եւ կաց առաջի Փարաւոնի. եւ
ահա նա ելանէ ի ջուր անդր. եւ ասասցես
ցնա, Այսպէս ասէ Տէր, Արձակեա զժո-
21 ղովուրդ իմ զի պաշտեսցեն զիս. Ապա թէ
ոչ կամիցիս արձակել զժողովուրդ իմ, ա-
հա ես առաքեմ ի վերայ քո եւ ի վերայ
ծառայից քոց եւ ի վերայ ժողովրդեան քո
եւ ի վերայ տանց ձերոց շանաճանճ. եւ
լցցին տունք Եգիպտացւոցդ շանաճանճիւ,
22 եւ երկիրն յորում իցեն ի նմա։ Եւ սքան-
չելի արարից յաւուրն յայնմիկ զերկիրն
Գեսեմ, յորում ժողովուրդն իմ իցէ, եւ
մի լիցի անդ շանաճանճ. զի գիտասցես թէ
23 ես եմ Տէր, [4]Տէր ամենայն" երկրի։ Եւ տաց
խտրոց ի մէջ ժողովրդեան իմոյ եւ ի մէջ
ժողովրդեան քո. եւ վաղիւ եղիցի նշանդ
24 այդ [4]ի վերայ երկրիդ"։ Եւ արար Տէր այն-
պէս. եւ եկն շանաճանճ բազում ի տունս
Փարաւոնի եւ ի տունս ծառայից նորա
եւ յամենայն երկիրն Եգիպտացւոց. եւ
սատակեցաւ երկիրն ի շանաճանճէ անտի։
25 Եւ կոչեաց Փարաւոն զՄովսէս եւ զԱ-
հարոն, եւ ասէ, Երթայք զոհեցէք [2]Տեառն
Աստուծոյ ձերում աստէն ի սմին երկրիս
26 Եւ ասէ Մովսէս, Ձէ մարթ այդմ լինել
նթէ զգարշելիս Եգիպտացւոցդ զոհիցեմք
Տեառն Աստուծոյ մերում. քանզի եթէ
զոհիցեմք զգարշելիս Եգիպտացւոցդ ա-
27 ռաջի նոցա, քարկոծ առնեն զմեզ։ Այլ
երթիցուք երեքօրեայ ճանապարհ յանա-
պատ, եւ զոհեսցուք Տեառն Աստուծոյ
28 մերում, որպէս եւ [5]ասաց մեզ Տէր"։ Եւ
ասէ Փարաւոն, Ես արձակեմ զձեզ, եւ
զոհեսջիք Տեառն Աստուծոյ ձերում յա-
նապատի. այլ մի՛ ուրեք հեռի ձգիցիք եր-
թալ. եւ արդ աղօթս արարէք վասն իմ
29 [2]առ Տէր"։ Եւ ասէ Մովսէս, Ես ելից ի քէն
եւ աղօթս արարից առ [6]Աստուած, եւ փա-
րատեսցի շանաճանճդ ի Փարաւոնէ եւ ի
ծառայից իւրոց եւ ի ժողովրդենէ իւրմէ
վաղիւ. բայց մի՛ եւս խաբեսցէ Փարաւոն
առ ի չարձակել զժողովուրդդ զոհել
30 Տեառն։ Ել Մովսէս ի Փարաւոնէ, եւ եկաց
31 յաղօթս առ [6]Աստուած։ Եւ արար Տէր որ-
պէս եւ ասացն Մովսէս. եւ փարատեաց
զշանաճանճն ի Փարաւոնէ եւ ի ծառայից
նորա եւ ի ժողովրդենէ նորա. եւ ոչ մնաց
32 եւ ոչ մի։ Եւ ծանրացոյց Փարաւոն զսիրտ
իւր եւ ի ժամանակին յայնմիկ, եւ ոչ կա-
մեցաւ արձակել զժողովուրդն։

ԳԼ. Թ

1 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Մուտ առ Փա-
րաւոն եւ ասասցես ցնա, Այսպէս ասէ Տէր
Աստուածն Եբրայեցւոց, Արձակեա զժո-
2 ղովուրդ իմ զի պաշտեսցեն զիս. Ապա թէ
ոչ կամիս արձակել զժողովուրդ իմ, այլ
3 տակաւին ունիցիս զդա, Ահա ձեռն Տեառն
եղիցի ի խաշինս քո որ ի դաշտի են, եւ ի
ձիս եւ յէշս եւ յուղտս եւ յարջառ եւ յոչ-
4 խար մահու մեծաւ յոյժ։ Եւ [7]արարից ես
սքանչելիս" ի մէջ խաշանցն Եգիպտաց-
ւոց, եւ ի մէջ խաշանցն Իսրայելի, եւ ոչ
ծախեսցի [8]յամենայն որդւոցն Իսրայելի
5 կենչն։ Եւ ժամանակեաց [6]Աստուած եւ
ասէ, Վաղիւ արասցէ Տէր զբանդ զայդ ի
6 վերայ երկրիդ։ Եւ արար Տէր զբանն զայն
ի վաղիւ անդր, եւ սատակեցաւ ամենայն
անասուն Եգիպտացւոցն. բայց յանասնոց
որդւոցն Իսրայելի ոչ ծախեցաւ եւ ոչ ինչ։
7 Իբրեւ ետես Փարաւոն, թէ ոչ ծախեցաւ
յանասնոց որդւոցն Իսրայելի եւ ոչ ինչ,
ծանրացաւ սիրտ նորա, եւ ոչ արձակեաց
զժողովուրդն։

---

[1]Նբբ. գորտոյն զոր ած ի վերայ [2]Յեբբ. պակասի
[3]Նբբ. ամենայն հող երկրին եղեւ մուն, յա-
մենայն [4]Նբբ. ի մէջ

[5]Նբբ. ասասցէ մեզ [6]Նբբ. Տէր [7]Նբբ. բաժա-
նեսցէ Տէր [8]Նբբ. յամենայնէ

8 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ Ա-
հարոնի եւ ասէ, Առէք դուք լի ձեռօք
ձերովք մոխիր հնոցի, եւ ցանեսցէ զայն
Մովսէս ընդ երկինս առաջի Փարաւոնի
9 [1]եւ առաջի ծառայից նորա": Եւ եղիցի
փոշի ընդ ամենայն երկիրդ Եգիպտացւոց.
եւ եղիցի ի մարդ եւ յանասուն կեղ, ե-
ռացեալ խաղաւարտք. [1]իմարդ եւ յանա-
սուն" յամենայն երկրին Եգիպտացւոց:
10 Եւ առին զմոխիր հնոցին [2]առաջի Փարա-
ւոնի. եւ ցանեաց զայն Մովսէս ընդ եր-
կինս. եւ եղեւ կեղ, խաղաւարտք եռաց-
11 եալք, ի մարդ եւ յանասուն: Եւ ոչ կա-
րէին կախարդքն կալ առաջի Մովսիսի
վասն կեղոյն. քանզի եղեւ կեղն եւ ի կա-
խարդսն, եւ յամենայն [3]երկրին Եգիպ-
12 տացւոց": Եւ խստացոյց Տէր զսիրտն Փա-
րաւոնի, եւ ոչ լուաւ նոցա, որպէս եւ ա-
սաց Տէր ցՄովսէս:
13 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Կանխեա ընդ
առաւօտն, եւ կաց առաջի Փարաւոնի, եւ
ասասցես ցնա, Այսպէս ասէ Տէր Աստուած
Եբրայեցւոց, Արձակեա զժողովուրդ իմ
14 զի պաշտեսցեն զիս. Քանզի յայսմ ժամա-
նակի առաքեցից ես զամենայն պատու-
հաս ի սիրտ քո եւ ծառայից քոց եւ ժո-
ղովրդեան քո. զի գիտասցես թէ չիք ոք
15 իբրեւ զիս յամենայն երկրի: Քանզի ձգեալ
զձեռն իմ հարից զքեզ եւ զժողովուրդ քո
16 մահուամբ, եւ սատակեսցիս յերկրէ: Եւ
վասն այնորիկ [4]պահեցար, զի ի քեզ ցու-
ցից զզօրութիւն իմ, եւ զի պատմեսցի
17 անուն իմ ընդ ամենայն երկիր: Եւ դու
տակաւին [5]թեւարկե՞ս զժողովրդեամբ ի-
18 մով չարչարել" զդոսա: Եւ ահա տեղա-
ցից վաղիւ յայսմ ժամու կարկուտ սաս-
տիկ յոյժ, որպիսի ոչ եղեւ յԵգիպտոս յօրէ
19 յորմէ հաստատեցաւ մինչեւ ցայսօր: Եւ
արդ փութա ժողովել զանասուն քո եւ որ
ինչ իցէ քո ի դաշտի. զի ամենայն մարդ
եւ անասուն որ գտցի ի դաշտի եւ ոչ մտցէ
ի տուն, անկցի ի վերայ նոցա կարկուտն
20 եւ [6]սատակեսցէ: Որ միանգամ երկեաւ ի
բանէ Տեառն ի ծառայիցն Փարաւոնի, ժո-
ղովեաց զծառայս իւր եւ զանասուն ի
21 տուն. Եւ որ ոչն անսաց ի միտս իւր բա-
նիցն Տեառն, եթող զծառայս իւր եւ զա-
նասուն իւր ի դաշտի:

22 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ձգեա զձեռն քո
յերկինս, եւ եղիցի կարկուտ ի վերայ ա-
մենայն երկրիդ Եգիպտացւոց, ի վերայ
մարդկան եւ անասնոց, եւ ի վերայ ամե-
նայն բանջարոյ որ է ի դաշտի երկրիդ Ե-
23 գիպտացւոց: Եւ ձգեաց Մովսէս [7]զձեռն
իւր յերկինս. եւ ետ Տէր բարբառս եւ կար-
կուտ, եւ ընթանայր հուր ընդ երկիրն. եւ
տեղաց Տէր կարկուտ ի վերայ երկրին Ե-
24 գիպտացւոց: Էր կարկուտ եւ հուր բոր-
բոքեալ ի մէջ կարկտին. եւ կարկուտն
սաստիկ էր յոյժ, որպիսի ոչ եղեւ յամե-
նայն երկրին Եգիպտացւոց, յորմէ հետէ
25 եղեալ էր ի վերայ նորա ազգ: Եհար կար-
կուտն յամենայն երկրին Եգիպտացւոց
զամենայն որ ինչ էր ի դաշտի ի մարդոյ
մինչեւ յանասուն, եւ զամենայն բանջար
որ ի դաշտի էր՝ եհար կարկուտն, եւ զա-
մենայն փայտ որ ի դաշտս՝ մանրեաց:
26 Բայց յերկրին Գեսեմ, ուր էին որդիքն
27 Իսրայելի, ոչ եղեւ կարկուտ: Եւ առաք-
եալ Փարաւոնի կոչեաց զՄովսէս եւ զԱ-
հարոն եւ ասէ ցնոսա, [8]Մեղայ. այսու-
հետեւ" Տէր արդար է, եւ ես եւ ժողո-
28 վուրդ իմ ամպարիշտք: Կացէք յաղօթս
վասն իմ առ Տէր, եւ դադարեսցեն ի լի-
նելոյ ձայնքն Աստուծոյ եւ կարկուտն եւ
հուր. եւ արձակեցից զձեզ, եւ ոչ եւս
29 յաւելուցուք մնալ: Եւ ասէ ցնա Մովսէս,
Այժմ իբրեւ ելից ընդ քաղաքս՝ ձգեցից
զձեռս իմ առ [9]Աստուած, եւ ձայնքն դա-
դարեսցեն, եւ կարկուտն եւ անձրեւ ոչ
եւս լիցի. զի ծանիցես թէ Տեառն է եր-
30 կիր: Եւ դու եւ ծառայք քո գիտեմ թէ
չեւ եւս երկերուք ի Տեառնէ Աստուծոյ:
31 Կտաւն եւ գարին հարաւ. զի գարին յաճ
32 կայր եւ կտաւն սերմանացեալ էր: Եւ ցոր-
եանն եւ հաճար ոչ հարան, զի անագան էին:
33 Եւ ել Մովսէս ի Փարաւոնէ արտաքս
քան զքաղաքն, եւ ձգեաց զձեռն իւր առ
Տէր, եւ դադարեցին ձայնքն եւ կար-
կուտն, եւ անձրեւ ոչ եւս կաթեաց յեր-
34 կիր: Իբրեւ ետես Փարաւոն եթէ դադար-
եաց անձրեւն եւ կարկուտ եւ ձայնքն,
յաւել ի մեղանչել, եւ ծանրացոյց զսիրտ
35 իւր [10]եւ ծառայից իւրոց": Եւ խստացաւ
սիրտն Փարաւոնի եւ ոչ արձակեաց զոր-
դիսն Իսրայելի, որպէս խօսեցաւ Տէր ի
ձեռն Մովսիսի:

[1]Յեբր. պակասէ [2]Յեբր. և կացին առաջի [3]Յեբր. Եգիպտացիս [4]Յեբր. յարուցի զքեզ [5]Յեբր. խրոխտա՞ս ի վերայ ժողովրդեան իմոյ չարձակել [6]Յեբր. սատակեսցին

[7]Յեբր. զգաւազան [8]Յեբր. Մեղայ զայս նուագ. [9]Յեբր. Տէր [10]Յեբր. որպէս և ծառայք նորա

## Գլ. Ժ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
Մուտ առ Փարաւոն, զի ես խստացուցի
զսիրտ նորա եւ զսիրտ ծառայից նորա, զի
կարգաւ եկեսցեն նշանքն իմ ի վերայ նո-
2 ցա. Որպէս զի պատմիցէք յականջս որդ-
ւոց ձերոց, եւ որդւոց որդւոց ձերոց, որ-
չափ խաղացի ընդ Եգիպտացիս, եւ
զնշանս իմ զոր արարի ի նոսա, եւ ծանի-
ջիք թէ ես եմ Տէր։
3 Մտին Մովսէս եւ Ահարոն առաջի Փա-
րաւոնի, եւ ասեն ցնա, Այսպէս ասէ Տէր
Աստուածն Եբրայեցւոց, Մինչեւ յե՞րբ ոչ
կամիցիս [1]ամաչել յինէն". արձակեա զժո-
4 ղովուրդ իմ զի պաշտեսցեն զիս։ Ապա թէ
ոչ կամիցիս դու արձակել զժողովուրդ իմ,
ահաւասիկ ես ածից ի սոյն ժամու վաղիւ
մարախ [2]սաստիկ ի վերայ [2]ամենայն սահ-
5 մանաց քոց. Եւ ծածկեսցէ [3]զամենայն ե-
րեսս երկրի, եւ ոչ կարիցես" տեսանել զեր-
կիր. եւ կերիցէ զամենայն նշխարն զոր
եթող ձեզ կարկուտն, եւ կերիցէ զամե-
նայն փայտ բուսեալ ձեզ ի վերայ երկրի։
6 Եւ լցցին տունք քո եւ տունք ամենայն
ծառայից քոց, եւ տունք յամենայն երկրիդ
Եգիպտացւոց. զոր ոչ երբեք տեսին հարք
ձեր եւ ոչ հաւք նոցա, յօրմէ օրէ եղեն
յերկրի մինչեւ ցայսօր։ Եւ խոյս տուեալ
ել ի Փարաւոնէ։
7 Ասեն ցնա ծառայքն Փարաւոնի, Մին-
չեւ յե՞րբ լիցէ մեզ խոչ այդ. արձակեա
զմարդիկն զի պաշտեսցեն զՏէր Աստուած
իւրեանց. եթէ գիտե՞լ կամիցիս զի կորեաւ
8 Եգիպտոս։ Եւ դարձուցին զՄովսէս եւ
զԱհարոն առ Փարաւոն. եւ ասէ ցնոսա,
Երթայք պաշտեցէք զՏէր Աստուած ձեր.
9 բայց ո՞վ եւ ո՞վ իցեն որ երթայցեն։ Եւ
ասէ Մովսէս, Երիտասարդօք հանդերձ եւ
ծերովք մերովք երթիցուք. ուստերօք եւ
դստերօք մերովք, արջառով եւ ոչխարով
մերով երթիցուք, զի տօն [4]է Տեառն Աս-
10 տուծոյ մերոյ"։ Եւ ասէ ցնոսա, Եղիցի
այդպէս, Տէր ընդ ձեզ. [5]քանզի արձակեմ
զձեզ. միթէ եւ զստացուածս ձեր. տեսա-
11 նէք զի չարիք կան ի ձեզ"։ Մի՛ այդպէս. այլ
երթիցեն արք եւեթ, եւ [6]պաշտեսցեն զԱս-
տուած". քանզի զայդ խնդրէիք դուք։
Եւ հանին զնոսա յերեսաց Փարաւոնի։
12 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ձգեա զձեռն քո
ի վերայ երկրիդ Եգիպտացւոց, եւ ելցէ
մարախ ի վերայ երկրիդ Եգիպտացւոց,
եւ կերիցէ զամենայն բանջար երկրիդ,
[2]եւ զամենայն պտուղ ծառոց" զոր եթող
13 կարկուտն։ Եւ ամբարձ Մովսէս [7]զձեռն
իւր յերկինս". եւ ած Տէր հողմ [8]հարաւոյ
յերկիր զտիւն ամենայն եւ զգիշերն ամե-
նայն. իբրեւ առաւօտ եղեւ, եւ հողմ[8]հա-
14 րաւոյ առ զմարախն։ Եւ [9]եհան յամենայն
երկիրն Եգիպտացւոց, եւ [10]դադարեցոյց
ի վերայ ամենայն սահմանացն Եգիպտա-
ցւոց. յառաջ քան զայն ոչ եղեւ այնպիսի
մարախ, եւ յետ անորիկ ոչ [11]եղեւ այն-
15 պիսի։ Եւ ծածկեաց զամենայն երեսս
երկրին, եւ [12]ապականեցաւ երկիրն", եւ
եկեր զամենայն բանջար երկրին եւ զա-
մենայն պտուղ ծառոց որ մնաց ի կարկտէ
անտի. եւ ոչ մնաց կանաչ, ոչ ի ծառս եւ
ոչ յամենայն բանջար դաշտի յամենայն
երկրին Եգիպտացւոց։
16 Եւ փութացաւ Փարաւոն կոչել զՄով-
սէս եւ զԱհարոն, եւ ասէ, Մեղայ առաջի
17 Տեառն Աստուծոյ ձերոյ եւ ձեզ. Արդ նե-
րեցէք այսմ եւս յանցանաց իմոց, եւ ա-
ղաչեցէք առ Տէր Աստուած ձեր, եւ [13]փա-
18 րատեսցէ յինէն զմարախս" զայս։ Եւ ել
Մովսէս ի Փարաւոնէ, եւ եկաց յաղօթս
19 առ [14]Աստուած։ Եւ դարձոյց Տէր հողմ
սաստիկ [15]ի ծովէ, եւ առ զմարախն եւ ա-
մաց ի ծովն Կարմիր. եւ ոչ մնաց մարախ
20 յամենայն երկրին Եգիպտացւոց։ Եւ
խստացոյց Տէր զսիրտն Փարաւոնի, եւ ոչ
արձակեաց զորդիսն Իսրայելի։
21 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ձգեա զձեռն
քո յերկինս, եւ եղիցի խաւար ի վերայ
երկրիդ Եգիպտացւոց, խաւար շօշափելի։
22 Ձգեաց Մովսէս զձեռն իւր յերկինս, եւ
եղեւ խաւար եւ մէգ եւ մութ ի վերայ
ամենայն երկրին Եգիպտացւոց զերիս ա-
23 ւուրս. Եւ ոչ ոք տեսանէր զեղբայր իւր
[2]զերիս աւուրս", եւ ոչ յարեաւ ոք յան-
կողնէ իւրմէ զերիս աւուրս. բայց ամե-
նայն որդւոյն Իսրայելի լոյս էր յամենայն
բնակութիւնս իւրեանց։

---

[1] Եբր. խոնարհել առաջի իմ [2] Յեբր. պակասէ [3] Եբր. զերեսս երկրի. և չիցէ մարթ [4] Եբր. Տեառն է մեզ [5] Եբր. եթէ արձակեցից զձեզ և զտղայս ձեր, տեսէք զի չարիք կան առաջի ձեր [6] Եբր. պաշտեցէք զՏէր

[7] Եբր. զգաւազան իւր ի վերայ երկրին Եգիպտացւոց [8] Եբր. արեւելից [9] Եբր. ելին [10] Եբր. հանգեան [11] Եբր. եղիցի [12] Եբր. եղեւ խաւար յերկրին [13] Եբր. բարձցէ միայն յինէն զմահս [14] Եբր. Տէր [15] Կամ, յարեւմտից

24 Եւ կոչեաց Փարաւոն զՄովսէս [1]եւ
զԱհարոն" եւ ասէ [1]ցնոսա, Երթայք պաշ-
տեցէք զՏէր [1]Աստուած ձեր", բայց զար-
ջառ եւ զոչխար ձեր աստէն թողէք, եւ
25 այլ աղխդ ձեր երթիցեն ընդ ձեզ։ Եւ
ասէ Մովսէս, Նա եւ դու եւս տացես
մեզ ողջակէզս եւ զոհս զոր առնիցեմք
26 Տեառն Աստուծոյ մերում։ Այլ մեր ա-
նասուն իսկ երթիցէ ընդ մեզ, եւ ոչ թո-
ղուցումք եւ ոչ կճղակ մի. քանզի ի
նոցանէ առնուցումք պաշտել զՏէր Աս-
տուած մեր. եւ մեք ոչ գիտեմք զինչ
մատուցանիցեմք Տեառն [1]Աստուծոյ մե-
27 րում" մինչեւ անդր հասանիցեմք։ Եւ
խստացոյց Տէր զսիրտն Փարաւոնի, եւ
28 ոչ կամեցաւ արձակել զնոսա։ Եւ ասէ
Փարաւոն, Ի բաց գնա յինէն. զգոյշ լեր
անձին քում, մի եւս յաւելուցուս տե-
սանել զերեսս իմ. զի յորում աւուր երեւիս
29 դու ինձ, մեռանիս։ Եւ ասէ Մովսէս,
[2]Ասացեր. ոչ եւս երեւեցայց երեսաց քոց։

## ԳԼ. ԺԱ

1 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Այլ միւս եւս հա-
րուածս ածից ի վերայ Փարաւոնի եւ ի վե-
րայ Եգիպտոսի, եւ ապա արձակեսցէ զձեզ
աստի. այլ յորժամ արձակեսցէ զձեզ, ա-
2 մենեւին հանցէ զձեզ աստի։ Արդ խօս-
եաց [1]գաղտ յականջս ժողովրդեանն, եւ
խնդրեսցեն իւրաքանչիւր ոք յընկերէ
իւրմէ եւ կին ի դրացւոյ իւրմէ անօթս ոս-
կեղէնս եւ անօթս արծաթեղէնս [1]եւ հան-
3 դերձս"։ Եւ ետ Տէր շնորհս ժողովրդեան
իւրում առաջի Եգիպտացւոցն, [1]եւ ետուն
նոցա ի զարդ." եւ այրն Մովսէս մեծարոյ
եղեւ յոյժ [3]առաջի Եգիպտացւոցն եւ ա-
ռաջի Փարաւոնի, եւ առաջի ամենայն
ծառայից նորա", եւ յաչս ժողովրդեանն։
4 Եւ ասէ Մովսէս, Այսպէս ասէ Տէր,
Զհասարակ գիշերաւ ես մտից ի մէջ Ե-
5 գիպտոսի. Եւ սատակեսցի ամենայն անդ-
րանիկ յերկրին Եգիպտացւոց, յանդրանկէ
անտի Փարաւոնի որ նստի յաթոռ նորա,
մինչեւ ցանդրանիկ աղախնոյն որ կայցէ
առ երկանս, եւ մինչեւ ցանդրանիկ ամե-
6 նայն անասնոց։ Եւ եղիցի աղաղակ մեծ
յամենայն երկրին Եգիպտացւոց, որպիսի
ոչ եղեւ եւ ոչ եւս յաւելուցու լինել նոյն-
7 պիսի։ Եւ [4]ի մէջ ամենայն" որդւոցն Իս-
րայելի ոչ կանչեսցէ եւ ոչ շուն մի լեզուաւ
իւրով, եւ ոչ ի մարդոյ մինչեւ յանասուն.
զի [5]գիտասցես որչափ ինչ սքանչելիս ա-
րասցէ" Տէր ի մէջ Եգիպտացւոց եւ ի մէջ
8 Իսրայելի։ Եւ իջցեն ամենայն ծառայքս
քո այսոքիկ առ իս, եւ երկիր պագցեն ինձ
եւ ասասցեն, Ել դու եւ ամենայն ժողո-
վուրդ քո, որում դուդ առաջնորդես. եւ
ապա ելից։ Եւ ել Մովսէս ի Փարաւոնէ
լի բարկութեամբ։
9 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ոչ լուիցէ ձեզ
Փարաւոն, զի յաճախեսցին զնշանս իմ [1]եւ
10 զարուեստս" յերկրին Եգիպտացւոց։ Եւ
Մովսէս եւ Ահարոն արարին զամենայն
նշանս [6]եւ զարուեստս զայսոսիկ յերկրին
Եգիպտացւոց" առաջի Փարաւոնի. եւ
խստացոյց Տէր զսիրտն Փարաւոնի, եւ ոչ
կամեցաւ արձակել զորդիսն Իսրայելի
յերկրէն [7]Եգիպտացւոց։

## ԳԼ. ԺԲ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ
Ահարոնի յերկրին Եգիպտացւոց, եւ ասէ,
2 Ամիսս այս եղիցի ձեզ սկիզբն ամսոց. ա-
3 ռաջին եղիցի ձեզ յամիսս տարւոյ։ [8]Խօս-
եաց ընդ ամենայն ժողովրդեան որդւոցն
Իսրայելի եւ [9]ասասցես, Ի տասներորդում
ամսեանս այսորիկ առցեն իւրեանց իւրա-
քանչիւր [10]ոչխար ըստ տունս ազգացն
4 իւրեանց, [10]ոչխար ըստ երդ։ Եւ եթէ սա-
կաւք իցեն ի տանն՝ որպէս թէ չիցեն բա-
ւական լինել [11]ոչխարին, առցէ ընդ իւր
զդրացի իւր եւ զընկեր իւր ըստ մարդա-
թուի. իւրաքանչիւր ըստ բաւականի իւ-
5 րում համարեսցի [12]յոչխարն։ Ոչխար" կա-
տարեալ՝ արու, տարեւոր, անարատ լիցի
6 ձեզ. յօդեաց եւ յայծեաց առնուցուք։ Եւ
եղիցի ձեզ պահեալ մինչեւ ի չորս եւ ի
տասն աւուր ամսոյս այսորիկ. եւ զենցեն
զնա ամենայն բազմութիւն ժողովրդեան
7 որդւոցն Իսրայելի ընդ երեկս։ Եւ առցեն
յարենէ անտի եւ դիցեն ի վերայ երկուց
սեմոցն եւ բարաւորին տանցն յորս ուտի-
8 ցեն զնա ի նոսա։ Եւ կերիցեն զմիսն ի
գիշերիս յայսմիկ. խորովեալ հրով, եւ բա-
9 ղարջ ընդ եղեգի կերիցեն. Եւ ոչ ուտիցէք
ի նոցանէ հում, եւ ոչ եփեալ ջրով,

---

1 Եբր. [illegible] 2 Եբր. Ուղիղ ասացեր 3 Եբր. յերկրին Եգիպտացւոց, յաչս ծառայից Փարաւոնի 4 Եբր. [illegible] յամենայն

5 Եբր. գիտասջիք եթէ բաժանեսցէ 6 Եբր. զայսոսիկ 7 Եբր. ի բմէ 8 Եբր. Խօսեցարուք 9 Եբր. ասացէք 10 Կամ, զառն 11 Կամ, զառինն 12 Կամ, ի գառննս (5) Գառն

այլ խորովեալ հրով. զգլուխն ոտիւքն հան-
10 դերձ, եւ զփորոտին նորա։ Եւ ոչ թողու-
ցուք ի նմանէ յայգ. [1]եւ ոսկր մի բեկա-
նիցէք ի նմանէ." եւ որ ինչ մնայցէ ի նմա-
11 նէ յայգ՝ հրով այրեսջիք ։ Եւ այսպէս ու-
տիցէք. գօտիք ձեր ընդ մէջս, եւ կօշիկք
ձեր յոտս, եւ ցուպք ձեր ի ձեռին. փու-
թանակի ուտիցէք, զի [2]զատիկ Տեառն է։
12 Եւ անցից ընդ ամենայն երկիրդ Եգիպ-
տացւոց ի գիշերիս յայսմիկ, եւ հարից զա-
մենայն անդրանիկ երկրիդ Եգիպտացւոց
ի մարդոյ մինչեւ յանասուն. եւ յամենայն
դիս Եգիպտացւոց արարից վրէժխնդրու-
13 թիւն. զի ես եմ Տէր։ Եւ եղիցի ձեզ արիւնդ
[3]նշանակեալ ի վերայ տանց՝ յորս լիցէք
դուք անդ. եւ տեսից զարիւնդ եւ [4]ապրե-
ցուցից զձեզ". եւ ոչ լինիցին ի ձեզ հար-
ուածք ի սատակել՝ յորժամ հարկանիցեմ
14 յերկրիդ Եգիպտացւոց։ Եւ եղիցի ձեզ օրդ
այդ ի յիշատակ, եւ տօնեցէք զդա՝ տօն
Տեառն. յազգս ձեր օրէն յաւիտենական
15 տօնեցէք զդա։ Զեւթն օր բաղարջ ուտի-
ցէք. յառաջնումէ իսկ օրէ անտի անհետ
առնիջիք զխմոր ի տանց ձերոց. ամենայն
որ ուտիցէ խմորեալ՝ սատակեսցի անձն
այն յԻսրայէլէ՝ յառաջնումէ օրէն մինչեւ
16 յօրն եւթներորդ։ Եւ [5]օրն առաջին կոչես-
ցի սուրբ, եւ օրն եւթներորդ նուիրեալ
եղիցի ձեզ" սուրբ. զամենայն գործ սպա-
սու մի գործիցէք ի նմա, բայց միայն [6]որ
գործիցի ամենայն անձին" այն միայն գոր-
17 ծեսցի ձեզ։ Եւ պահեսջիք [7]զպատուիրանս
իմ զայս". զի յաւուր յայսմիկ [8]հանից զզօ-
րութիւն ձեր յերկրէս Եգիպտացւոց. եւ
առնիցէք զօրս զայս յազգս ձեր օրէն յաւի-
18 տենական։ Ի սկսանել չորեքտասանե-
րորդի աւուր ամսոյն առաջնոյ յերեկորեայ
բաղարջ ուտիցէք մինչեւ ցքսան եւ մի օր
19 ամսոյն ցերեկոյ։ Զեւթն օր մի գտցի խմոր
ի տունս ձեր. ամենայն որ ուտիցէ խմոր-
եալ՝ սատակեսցի անձն այն ի ժողովրդենէ
Իսրայէլի յեկաց եւ ի բնակաց երկրին ։
20 Խմորեալ մի [9]ուտիցեն. յամենայն բնա-
կութեան ձերում ուտիցէք բաղարջ ։
21 Եւ կոչեաց Մովսէս զամենայն ծերա-
կոյտ որդւոցն Իսրայէլի, եւ ասէ ցնոսա

[1]Օրին. դոլոսէ [2]Օրին. փեսախ, այսինքն անցանել. (տես ծանօթութիւն 4)։ [3]Օրին. ի նշան [4]Օրին անցից զձեւք [5]Օրին. յաւուրն առաջնում եղիցի ժողով սուրբ, և յաւուրն եւթներորդի եղիցի ձեզ ժողով [6]Օրին. զոր ուտիցէ ամենայն անձն՝ [7]Օրին զտօն բաղարջոյն [8]Օրին. հանի [9]Օրին. ուտիցէք

Երթայք առէք ձեզ [10]ոչխար ըստ ազգս
22 ձեր, եւ զենջիք ի զատիկ։ Եւ առնուցուք
մշտիկ զոպայի թաթաւեալ յարեան որ
[11]առ դրօքն" իցէ, եւ սրսկեսջիք զբարա-
ւորաւն եւ զերկոքումբք սեմովքն յարենէ
անտի որ [11]առ դրօքն". բայց դուք մի ելա-
նիցէք իւրաքանչիւր ըստ դրան տան իւ-
23 րոյ մինչեւ ցառաւօտ. Եւ անցցէ Տէր հար-
կանել զԵգիպտացիսդ, եւ տեսանիցէ զա-
րիւնն որ ի վերայ բարաւորին եւ ի վերայ
երկուց սեմոց, եւ զանց առնիցէ Տէր
զդրօքն, եւ ոչ տայցէ թոյլ սատակչին
24 մտանել ի տունս ձեր հարկանել։ Եւ պա-
հեսջիք զբանս զայս, օրէն քեզ եւ որդւոց
25 քոց մինչեւ ցյաւիտեան ։ Եւ եթէ մտա-
նիցէք յերկիրն զոր տացէ ձեզ Տէր, որ-
պէս եւ խօսեցաւ, պահեսջիք զպաշտօնդ
26 զայդ ։ Եւ եղիցի եթէ ասիցեն ցձեզ որ-
27 դիք ձեր, Զի՞նչ է պաշտօնս այս ձեզ, Ա-
սասջիք նոցա, եթէ Զոհ զատկի Տեառն է
այս, յորժամ [12]պահեաց զտունս" որդւոցն
Իսրայէլի յԵգիպտոս, մինչ հարկանէր զԵ-
գիպտացիսն, եւ զտունս մեր ապրեցոյց ։
Եւ խոնարհեցաւ ժողովուրդն եւ երկիր
28 եպագ ։ Եւ գնացեալ որդիքն Իսրայէլի ա-
րարին որպէս պատուիրեաց Տէր Մովսիսի
եւ Ահարոնի, նոյնպէս եւ արարին ։
29 Եւ եղեւ ի հասարակ գիշերի եւ Տէր ե-
հար զամենայն անդրանիկ յերկրին Եգիպ-
տացւոց, յանդրանկանէ անտի Փարաւոնի
որ նստէր յաթոռ նորա, մինչեւ յանդրա-
նիկ գերւոյն որ կայր ի վիրապի, եւ զա-
30 մենայն անդրանիկ անասնոց ։ Եւ յարեաւ
Փարաւոն գիշերայն, ինքն եւ ամենայն
ծառայք իւր եւ ամենայն Եգիպտացիք,
եւ եղեւ աղաղակ մեծ յամենայն երկրին
Եգիպտացւոց. զի ոչ գոյր տուն յորում ոչ
գոյր մեռեալ ի նմա ։
31 Եւ կոչեաց Փարաւոն զՄովսէս եւ զԱ-
հարոն գիշերայն, եւ ասէ ցնոսա, Արիք
եւ ելէք ի ժողովրդենէ իմմէ, եւ դուք եւ
որդիքն Իսրայէլի. երթայք եւ պաշտեցէք
զՏէր [1]Աստուած ձեր", որպէս ասացէք.
32 Եւ զարջառ եւ զոչխար ձեր առեալ գնա-
ցէք, որպէս եւ ասացէքն. բայց եւ զիս
33 օրհնեցէք։ Եւ բռնադատէին Եգիպտացիքն
զժողովուրդն փութանակի հանել զնոսա
յերկրէ անտի. քանզի ասէին թէ Ամենե-
34 քին իսկ մեռանիմք ։ Եւ առ ժողովուրդն
զհայսն իւրեանց մինչչեւ խմորեալ էր,

[10]Կամ, գառն [11]Օրին. ի կողքին [12]Օրին. զանց արար զտամբք

զզանգուածս իւրեանց ծրարեալ ի կտաւս
35 իւրեանց, ի վերայ ուսոց իւրեանց ։ Եւ
որդիքն Իսրայելի արարին որպէս եւ հրա-
ման ետ նոցա Մովսէս. եւ խնդրեցին յԵ-
գիպտացւոցն անօթս ոսկեղէնս եւ անօթս
36 արծաթեղէնս եւ հանդերձս ։ Եւ ետ Տէր
շնորհս ժողովրդեանն իւրում առաջի Եգիպ-
տացւոցն, եւ ետուն նոցա [1]ի զարդ. եւ
կողոպտեցին զԵգիպտացիսն ։
37 Եւ չուեցին որդիքն Իսրայելի յՌամե-
սայ ի Սոկքովթ. վեց հարեւր հազար այր
38 հետեւակ, թող զայլ աղխ։ Եւ խառնիճա-
ղանճ բազում ել ընդ նոսա, եւ արջառ եւ
39 ոչխար եւ անասուն բազում յոյժ ։ Եւ ե-
փեցին զհայսն զոր հանին յԵգիպտոսէ՝
նկանս բաղարջս, քանզի ոչ խմորեցաւ.
զի հանին զնոսա Եգիպտացիքն, եւ ոչ կա-
րէին մնալ. եւ ոչ պաշար արարին իւրեանց
ճանապարհին ։
40 Եւ բնակութիւն որդւոցն Իսրայելի զոր
բնակեցին յերկրին Եգիպտացւոց [2]եւ յերկ-
րին Քանանացւոց՝ ինքեանք եւ հարք իւր-
եանց", ամք չորեք հարեւր եւ երեսուն ։
41 Եւ եղեւ յետ չորեք հարեւր եւ երեսուն
ամի, յաւուր յայնմիկ ելին ամենայն զօ-
րութիւնք Տեառն յերկրէն Եգիպտացւոց։
42 [3]Գիշերի որ է յառաջապահեստ Տեառն՝ հա-
նել" զնոսա յերկրէն Եգիպտացւոց. [4]այն
գիշեր յառաջապահեստ Տեառն՝ լինել" ա-
մենայն որդւոցն Իսրայելի յազգս նոցա ։
43 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ Ա-
հարոնի եւ ասէ, Այս է օրէն զատկի. ամե-
44 նայն այլազգի մի՛ կերիցէ ի նմանէ. Եւ զա-
մենայն ծառայ ուրուք եւ զարծաթագին
թլփատեսցես, եւ ապա կերիցէ ի նմանէ։
45 Պանդուխտն եւ վարձկանն մի՛ կերիցէ ի
46 նմանէ։ Ի տան միում կերիցի. եւ մի՛ հա-
նիցէք ի մսոյ անտի արտաքս քան զտունն,
47 եւ ոսկր մի՛ բեկանիցէք ի նմանէ ։ Ամե-
նայն ժողովուրդ որդւոցն Իսրայելի արաս-
48 ցեն զայն ։ Ապա թէ մերձենայցէ առ ձեզ
եկամուտ եւ առնիցէ զզատիկն Տեառն,
թլփատեսցես զամենայն արու մանուկ
նորա, եւ ապա մերձեսցի առնել զնա, եւ
եղիցի իբրեւ զբնակ երկրին. ամենայն ան-
49 թլփատ մի՛ կերիցէ ի նմանէ ։ Օրէն՝ մի եւ
նոյն կացցէ բնակին եւ եկին որ դայցէ
50 մերձենալ ի ձեզ ։ Եւ արարին ամենայն
որդիքն Իսրայելի, որպէս պատուիրեաց
Տէր Մովսիսի եւ Ահարոնի, նոյնպէս ա-
51 րարին ։ Եւ եղեւ յաւուր յայնմիկ եհան
Տէր զորդիսն Իսրայելի յերկրէն Եգիպ-
տացւոց հանդերձ զօրութեամբ իւրեանց։

## ԳԼ. ԺԳ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Սրբեա դու ինձ զամենայն անդրանիկ
"նախածին որ բանայ զամենայն արգանդ ի
մէջ որդւոցդ Իսրայելի, ի մարդոյ մինչեւ
3 յանասուն, քանզի իմ է ։ Եւ ասէ Մովսէս
ցժողովուրդն, Յիշեսջիք զօրս զայս յո-
րում ելէք յԵգիպտոսէ ի տանէ ծառայու-
թեան, զի հզօր ձեռամբ եհան զձեզ Տէր
4 աստի. եւ ոչ ուտիցէք խմորուն։ Զի յայսմ
աւուր ելանէք դուք յամսեանս կանխոց ։
5 Եւ եղիցի յորժամ [2]եթէ տանիցի զքեզ Տէր
[2]Աստուած քո" յերկիրն Քանանացւոց եւ
Քետացւոց եւ Ամովրհացւոց եւ Խեւաց-
ւոց եւ Յեբուսացւոց [2]եւ Փերեզացւոց եւ
Գերգեսացւոց", զոր երդուաւ հարցն քոց
տալ քեզ, երկիր որ բղխէ զկաթն եւ զմեղր,
եւ արասցես զպաշտօնս զայս յամսեանս
6 յայսմիկ։ Զեւթն օր բաղարջ կերիջիք, եւ
7 յաւուրն եւթներորդի տօն Տեառն ։ Բա-
ղարջ կերիջիք զեւթն օր, ոչ երեւեսցի առ
քեզ խմորուն, եւ ոչ եղիցի խմոր յամե-
8 նայն սահմանս քո ։ Եւ պատմեսցես որդ-
ւոյ քում յաւուր յայնմիկ եւ ասասցես,
Վասն այնորիկ արար ինձ Տէր [2]Աստուած,
9 մինչ ելանէի յԵգիպտոսէ ։ Եւ եղիցի քեզ
նշան ի վերայ ձեռին քո, եւ յիշատակ ա-
ռաջի աչաց քոց, զի լինիցին օրէնք Տեառն
ի բերանի քում. զի հզօր ձեռամբ եհան
10 զքեզ Տէր յԵգիպտոսէ։ Եւ պահեսջիք զօ-
րէնս զայս [5]ի ժամանակաց ի ժամանակս,
11 եւ" աւուրց յաւուրս ։ Եւ եղիցի յորժամ
տանիցի զքեզ Տէր [2]Աստուած քո" յերկիրն
Քանանացւոց, որպէս երդուաւ քեզ եւ
12 հարցն քոց, եւ տացէ զնա քեզ, Եւ զա-
տուսցես Տեառն զամենայն [2]արու որ բա-
նայ զարգանդ, եւ զամենայն որ բանայ
զարգանդ յանդէոց եւ յանասնոց քոց որ
լինիցի քեզ. արուքն [2]սուրբ Տեառն լինի-
13 ցին ։ Եւ զամենայն որ բանայցէ զարգանդ
իշոյ, փոխանակեսցես ընդ ոչխարի, եւ
եթէ ոչ փոխանակեսցես, [6]փրկեսցես զնա.
զամենայն անդրանիկս որդւոց քոց փրկես-
14 ցես ։ Եւ եթէ հարցանիցէ զքեզ որդին քո
յետ այսորիկ եւ ասիցէ թէ Զինչ է այդ.

[1]Եբր. զոր խնդրեցին [2]Յեբր. դ-ի--ե [3]Եբր. Գիշեր պահպանութեան է այն Տեառն, զի եհան [4]Եբր. այս իսկ է գիշեր պահպանութեան

[5]Եբր. ի ժամանակի իւրում, [6]Եբր. փոխատեսցես

ասասցես ցնա, Զի հզօր ձեռամբ եհան
զմեզ Տէր յերկրէն Եգիպտացւոց ի տանէ
15 ծառայութեան. Յորժամ խստացաւ Փա-
րաւոն չարձակել զմեզ, կոտորեաց Տէր
զամենայն անդրանիկս յերկրին Եգիպտա-
ցւոց, յանդրանկէ մարդոյ մինչեւ ցանդրա-
նիկս անասնոյ. վասն այնորիկ ես մատու-
ցանեմ Տեառն զամենայն արու որ բանայ
զարգանդ, եւ զամենայն անդրանիկս որդ-
16 ւոց իմոց փրկեցից։ Եւ եղիցի նշան ի վե-
րայ ձեռին քո, եւ [1]անշարժ առաջի աչաց
քոց, քանզի հզօր ձեռամբ եհան զմեզ
Տէր յԵգիպտոսէ։
17 Եւ իբրեւ արձակեաց Փարաւոն զժողո-
վուրդն, ոչ առաջնորդեաց նոցա Աստուած
ընդ երկիրն Փղշտացւոց, ընդ կարճոյ ճա-
նապարհ. քանզի ասաց Աստուած թէ
Գուցէ զանգիտիցէ ժողովուրդն յորժամ
տեսանիցէ զպատերազմ, եւ դառնայցէ
18 յԵգիպտոս։ Եւ պատեաց ած Աստուած
զժողովուրդն ընդ ճանապարհ անապատին՝
առ Կարմիր ծովուն. եւ [2]ի հինգերորդ ազ-
գի" ելին որդիքն Իսրայելի յերկրէն Եգիպ-
19 տացւոց։ Եւ առ Մովսէս զոսկերսն Յով-
սեփու ընդ իւր. քանզի երդմնեցոյց Յով-
սէփ զորդիսն Իսրայելի, եւ ասէ, Եթէ այ-
ցելութեամբ այց արասցէ ձեզ [3]Տէր, հան-
ջիք աստի զոսկերս իմ ընդ ձեզ։
20 Եւ չուեալ որդւոցն Իսրայելի ի Սոկ-
քովթայ, բանակեցան յՈթոմ առ անա-
21 պատաւն։ Եւ [4]Աստուած առաջնորդէր նո-
ցա ցերեկ սեամբ ամպոյ, ցուցանել նոցա
զճանապարհն, եւ զցայգ՝ սեամբ հրոյ,
լուսատու լինել նոցա ի գնալն՝ զցայգ եւ
22 զցերեկ։ Եւ ոչ պակասէր սիւն ամպոյն ի
տուէ եւ սիւն հրոյն ի գիշերի առաջի ամե-
նայն ժողովրդեանն։

ԳԼ. ԺԴ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Խօսեաց ընդ որդիսն Իսրայելի, եւ դարձ-
ցին բանակեսցին դէմ յանդիման [5]Հանդ-
րուանին, ընդ Մագդովղ եւ ընդ ծովն.
հանդէպ Բէեղսեպփովնայ, յանդիման նո-
3 ցա բանակեսցիս առ ծովեզերբն։ Եւ ա-
սասցէ Փարաւոն զորդւոցդ Իսրայելի թէ
Մոլորեալ են յերկրին, քանզի պատեաց
4 զնոսա անապատն։ Եւ ես խստացուցից
զսիրտն Փարաւոնի եւ պնդեսցի զհետ դո-
ցա. եւ փառաւորեցայց ի Փարաւոն, եւ
յամենայն զօրս նորա, եւ ծանիցեն [6]ամե-
նայն Եգիպտացիքն թէ ես եմ Տէր։ Եւ
արարին այնպէս։
5 Եւ ազդ եղեւ արքային Եգիպտացւոց
եթէ փախեաւ ժողովուրդն. եւ շրջեցաւ
սիրտն Փարաւոնի եւ ծառայից իւրոց ի
վերայ ժողովրդեանն, եւ ասեն, Զի՞նչ
գործեցաք զայն, զի արձակեցաք զորդիսն
6 Իսրայելի, զի մի՛ ծառայեսցեն մեզ։ Եւ
հանդերձեաց Փարաւոն զկառս իւր, եւ
[7]տարաւ ընդ իւր զամենայն ժողովուրդն"
7 իւր. Եւ առ վեց հարեւր կառս ընտիրս,
եւ զամենայն [8]երիվարս Եգիպտացւոց, եւ
8 սպառազէնս ի վերայ ամենեցուն։ Եւ
խստացոյց Տէր զսիրտն Փարաւոնի ար-
քային Եգիպտացւոց, եւ պնդեցաւ զհետ
որդւոցն Իսրայելի. եւ որդիքն Իսրայելի
9 ելանէին բարձրացեալ ձեռամբ։ Եւ պնդե-
ցան Եգիպտացիքն զհետ նոցա, եւ գտին
զնոսա բանակեալս առ ծովեզերբն. եւ ա-
մենայն երիվարք եւ կառք Փարաւոնի եւ
հեծեալք նորա եւ զօրք նորա յանդիման
[5]Հանդրուանին, հանդէպ Բեէղսեպփովնայ։
10 Եւ եհաս մօտ Փարաւոն, եւ համբար-
ձեալ որդւոցն Իսրայելի զաչս իւրեանց
[9]տեսանէին զի բանակեցան Եգիպտացիքն
ի թիկանց" նոցա, եւ երկեան յոյժ, եւ բո-
11 ղոքեցին որդիքն Իսրայելի առ Տէր։ Եւ
ասեն ցՄովսէս, Իբրեւ թէ ո՞չ գոյին գե-
րեզմանք յերկրին Եգիպտացւոց, հաներ
զմեզ սպանանել յանապատի աստ. զի՞նչ
գործեցեր զայս ընդ մեզ, զի հաներ զմեզ
12 յԵգիպտոսէ։ Ո՞չ այս այն բանք են զոր խօ-
սեցաք ընդ քեզ յերկրին Եգիպտացւոց, թէ
Թոյլ տուր մեզ զի ծառայեսցուք Եգիպ-
տացւոցն. զի լաւ էր մեզ ծառայել Եգիպ-
տացւոցն, քան մեռանել յայսմ անապա-
13 տի։ Եւ ասէ Մովսէս ցժողովուրդն, Քա-
ջալերեցարուք, պինդ կացէք, եւ տեսա-
նիցէք զփրկութիւն ի Տեառնէ զոր արասցէ
ձեզ այսօր. զի զոր օրինակ տեսէք զԵգիպ-
տացիսն այսօր, ոչ եւս յաւելուցուք տե-
սանել զնոսա յաւիտեանս ժամանակաց։
14 Տէր տայ պատերազմ ընդ ձեր, եւ դուք
լռեցէք։
15 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Զի՞ գոչես առ
իս. խօսեաց ընդ որդիսդ Իսրայելի եւ

[1]Եբր. գրապանակ [2]Եբր. գունդ կազմեալ [3]Եբր. Աստուած [4]Եբր. Տէր [5]Եբր. Փիայ-րօթայ

[6]Եբր. զօրն [7]Եբր. առ ընդ իւր զժողովուրդ [8]Եբր. կառս [9]Եբր. և ահա Եգիպտացիք պնդե-ին զհետ

16 չուեսցեն . Եւ դու առ զգաւազանդ քո եւ
ձգեա զձեռն քո ի վերայ ծովուն եւ պա-
տառեա զնա. եւ մացեն որդիքն Իսրայելի
17 ի մէջ ծովուն ընդ ցամաք ։ Եւ ահա ես
խստացուցից [1]զսիրտն Փարաւոնի եւ զԵ-
գիպտացւոցն ամենեցուն," եւ մտցեն զկնի
դոցա . եւ փառաւորեցայց ես ի Փարաւոն
եւ յամենայն զօրս նորա եւ ի կառս նորա
18 եւ յերիվարս նորա։ Եւ ծանիցեն ամենայն
Եգիպտացիքն թէ ես եմ Տէր , ի փառա-
ւորել իմում ի Փարաւոն եւ ի կառս նորա
եւ յերիվարս նորա ։
19 Եւ ամբարձաւ հրեշտակն Աստուծոյ որ
երթայր առաջի բանակի որդւոցն Իսրա-
յելի , եւ չոգաւ զկնի նոցա , եւ վերացաւ
սիւն ամպոյն յերեսաց նոցա եւ եկաց ի
20 թիկանց նոցա . Եւ եմուտ ի մէջ բանակի
Եգիպտացւոցն եւ ի մէջ բանակի Իսրա-
յելացւոցն , եւ եղեւ խաւար եւ [2]մէգ , եւ
անց գիշերն". եւ ոչ խառնեցան ընդ մի-
մեանս զամենայն գիշերն ։
21 Եւ ձգեաց Մովսէս զձեռն իւր ի վերայ
ծովուն, եւ[3]դարձոյց անդրէն զծովն բռնու-
թեամբ հողմոյ [4]հարաւոյ զամենայն գի-
շերն , եւ արար զծովն ցամաք , եւ պա-
22 տառեցաւ ջուրն ։ Եւ մտին որդիքն Իս-
րայելի ի մէջ ծովուն ընդ ցամաք . եւ ե-
ղեւ ջուրն պարիսպ ընդ աջմէ նոցա , եւ
ընդ ահեկէ իւրեանց ։
23 Պնդեցան Եգիպտացիքն եւ մտին զկնի
նոցա , ամենայն երիվարք Փարաւոնի եւ
կառք նորա եւ հեծեալք նորա ի մէջ ծո-
24 վուն։ Եւ եղեւ յառաւօտուն պահուն հայե-
ցաւ Տէր ի բանակն Եգիպտացւոց սեամբ
հրոյ եւ ամպոյ, եւ խռովեաց զբանակն Ե-
25 գիպտացւոցն . Եւ կապեաց զանիւս կա-
ռաց նոցա, եւ վարէր զնոսա բռնութեամբ.
ասեն Եգիպտացիքն, Փախիցուք յերեսաց
Իսրայելի , զի Տէր պատերազմի վասն նո-
ցա ընդ Եգիպտացիս ։
26 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ձգեա զձեռն քո
ի վերայ ծովուդ, եւ կարկատեսցի անդրէն
ջուրդ , եւ ծածկեսցէ զԵգիպտացիսդ ,
27 զկառս դոցա եւ զհեծեալս իւրեանց ։ Եւ
ձգեաց Մովսէս զձեռն իւր ի վերայ ծո-
վուն , եւ դարձաւ ջուրն ընդ առաւօտն ի
տեղի իւր, եւ Եգիպտացիքն փախեան յե-
րեսաց ջրոյն. եւ թօթափեաց Տէր զԵգիպ-
28 տացիսն ի մէջ ծովուն ։ Եւ դարձուցեալ
զջուրսն՝ ծածկեաց զկառս եւ զհեծեալս
եւ զամենայն զօրութիւն Փարաւոնի , որ
մտեալ էին զհետ նոցա ի ծով անդր. եւ ոչ
29 մնաց ի նոցանէ եւ ոչ մի ։ Եւ որդիքն Իս-
րայելի գնացին ընդ ցամաք ի մէջ ծովուն,
եւ ջուրն պարիսպ էր ընդ աջմէ նոցա եւ
30 ընդ ահեկէ իւրեանց ։ Եւ ապրեցոյց Տէր
զԻսրայէլ յաւուր յայնմիկ ի ձեռաց Եգիպ-
տացւոցն , եւ ետես Իսրայէլ զԵգիպտա-
31 ցիսն մեռեալս առ ափն ծովուն ։ Եւ ետես
Իսրայէլ զձեռն մեծ զոր արար Տէր ընդ
Եգիպտացիսն . եւ երկեաւ ժողովուրդն ի
Տեառնէ , եւ հաւատացին [5]յԱստուած եւ
ի Մովսէս ծառայ նորա ։

ԳԼ . ԺԵ

1 Յայնժամ երգեաց Մովսէս եւ որդիքն Իս-
րայելի զօրհնութիւնս զայս [6]Աստուծոյ ,
եւ ասեն , [7]Օրհնեսցուք զՏէր, զի փառօք
է փառաւորեալ . [8]զերիվարս եւ զհեծեալս
2 նոցա ընկէց ի ծով ։ Օգնական ընդունելի
իմ" Տէր , եւ եղեւ ինձ փրկութիւն . սա
է իմ Աստուած եւ փառաւոր արարից զսա.
Աստուած հօր իմոյ , եւ բարձր արարից
3 զսա ։ Տէր [9]խորտակէ զպատերազմունս ,
4 Տէր" անուն նորա։ Զկառս Փարաւոնի եւ
զզօրութիւնս նորա ընկէց ի ծով , զըն-
տիրս հեծելոց եւ զպառաւզէնս. ընկղմե-
5 ցան ի ծով Կարմիր։ Խորք ծածկեցին զնո-
6 սա , ընկլան յանդունդս իբրեւ զվէմ ։ Աջ
քո , Տէր , փառաւորեալ է զօրութեամբ .
7 աջ քո, Տէր, խորտակեաց զթշնամին ։ Եւ
բազմութեամբ փառաց քոց մանրեցեր
զհակառակորդս . առաքեցեր զբարկու-
թիւն քո եւ եկեր զնոսա իբրեւ զեղէգն ։
8 Եւ հողմով սրտմտութեամբ քով պատա-
ռեցան ջուրք, պաղեցան իբրեւ զպարիսպ
9 ջուրք. պաղեցան ալիք ի մէջ ծովուն։ Ա-
սաց թշնամին , Հալածեցից եւ հասից ,
բաժանեցից զաւարն, եւ լցուցից ի նոցանէ
զանձն իմ . [10]սատակեցից սրով իմով, տի-
10 րեսցէ նոցա" ձեռն իմ։ Առաքեցեր զհողմն
քո , եւ ծածկեաց զնոսա ծով . ընկղմե-
ցան իբրեւ զկապար ի ջուրս սաստիկս ։
11 Ո՞վ իցէ նման քեզ յաստուածս , Տէր ,

[1]Եբր. զսիրտ Եգիպտացւոցն [2]Եբր. մէգ Եգիպ-
տացւոցն , և լուսաւորեաց զգիշերն Իսրայէլա-
ցւոց [3]Եբր. դարձոյց Տէր [4]Եբր. արեւելից

[5]Եբր. ի Տէր [6]Եբր. Տեառն [7]Եբր. Օրհնեցից
[8]Եբր. զերիվարն եւ զհեծեալն նորա ընկէց ի ծով։
(2) Զօրութիւն իմ և գովութիւն [9]Եբր. է
այր պատերազմի, ԵՀՈՎԱՅ [10]Եբր. մերկա-
ցուցից զսուր իմ, սատակեսցէ զնոսա

[1]եւ կամ ո՞վ նմանիցէ քեզ, փառաւորեալդ
ի սուրբս, սքանչելի փառօք՟, որ առնես
12 զնչանս: Ձգեցեր զաջ քո, եւ եկուլ զնոսա
13 երկիր: Առաջնորդեցեր արդարութեամբ
ժողովրդեան քում այսմ զոր փրկեցեր.
[2]մխիթարեցեր զօրութեամբ քով ի բնա-
14 կեսդ սրբութեան քո: Լուան ազգք եւ
[3]բարկացան. եւ երկունք կալան զբնա-
15 կիչս [4]Քանանացւոց: Յայնժամ տագնա-
պեցան զաւառք Եդովմայ եւ իշխանք
Մովաբացւոց, կալաւ զնոսա դողումն.
հալեցան ամենայն բնակիչք Քանանա-
16 ցւոց: Անկցի ի վերայ նոցա ահ եւ երկեւղ.
մեծութեամբ բազկի քո քարասցին, մին-
չեւ անցցէ ժողովուրդ քո, Տէր, մինչեւ
անցցէ ժողովուրդ քո այս զոր ստացար:
17 Տարեալ տնկեսցես զնոսա ի լեառն ժա-
ռանգութեան քո, [5]ի պատրաստութիւն
բնակութեան քո, զոր արարեր, Տէր.
սրբութիւն, Տէր, զոր պատրաստեցին
18 ձեռք քո: Տէր թագաւոր յաւիտեան եւ
յաւիտեանս եւ եւս:
19 Զի մտին երիվարք Փարաւոնի կառօք
եւ հեծելովք նորա ի ծով, եւ ած ի վերայ
նոցա Տէր զջուրս ծովուն, եւ որդիքն Իս-
րայելի գնացին ընդ ցամաք ի մէջ ծովուն:
20 Եւ առ Մարիամ մարգարէ քոյրն Ահա-
րոնի զթմբուկն ի ձեռն իւր, եւ ելին ամե-
նայն կանայք զհետ նորա թմբկօք եւ պա-
21 րուք: Եւ յառաջէր Մարիամ եւ ասէր, [6]Օրհ-
նեսցուք զՏէր, զի փառօք է փառաւորեալ.
[7]զերիվարս եւ զհեծեալս՟ ընկէց ի ծով:
22 Եւ խաղացոյց Մովսէս զորդիսն Իսրա-
յելի ի Կարմիր ծովէ անտի, եւ ած զնոսա
յանապատն ի Սուր. եւ գնացին երեքօր-
եայ ճանապարհ յանապատի անդ, եւ ոչ
23 գտանէին ջուր ըմպելոյ: Եկին ի [8]Մեռա,
եւ ոչ կարէին ըմպել ջուր ի Մեռայն, քանզի
դառն էր. վասն այնորիկ անուանեաց զա-
24 նուն տեղւոյն այնորիկ Դառնութիւն: Եւ
տրտնջեաց ժողովուրդն զՄովսիսէ եւ ա-
25 սեն, Զի՞նչ արբցուք: Աղաղակեաց Մով-
սէս առ Տէր, եւ եցոյց նմա Տէր փայտ,
եւ արկ զայն ի ջուրն, եւ քաղցրացաւ
ջուրն: Եւ անդ ետ նմա իրաւունս եւ դա-
26 տաստանս. եւ անդ փորձեաց զնա, Եւ
ասէ, Եթէ լսելով լուիցես ձայնի Տեառն
Աստուծոյ քում, եւ զհաճոյս առաջի նո-
րա արասցես, եւ ունկնդիր լինիցիս պատ-
ուիրանաց նորա, եւ պահեսցես զամենայն
իրաւունս նորա, զամենայն զախտն զոր
ածի ի վերայ Եգիպտացւոցն, ոչ ածից ի
վերայ քո. զի ես եմ Տէր որ բժշկեմ զքեզ:
27 Եւ եկին յԵղիմ. եւ էին անդ երկոտասան
աղբեւր ջրոց եւ եւթանասուն ծառ ար-
մաւենեաց. եւ անդ բանակեցան առ ջրովն:

## Գլ. ԺԶ

1 Չուեցին յԵղիմայ, եւ եկին ամենայն ժո-
ղովուրդ որդւոցն Իսրայելի յանապատն ի
Սին, որ է ընդ Եղիմ եւ ընդ Սինա, յա-
ւուրն հնգետասաներորդի յերկրորդի ամ-
սեան ելանելոյ նոցա յերկրէն Եգիպտա-
2 ցւոց: Տրտնջեաց ամենայն ժողովուրդ որդ-
ւոցն Իսրայելի զՄովսիսէ եւ զԱհարոնէ
3 յանապատի անդ: Եւ ասեն ցնոսա որդիքն
Իսրայելի, Լաւ էր թէ մեռեալ էաք [9]հար-
ուածովքն ի Տեառնէ՟ յերկրին Եգիպտա-
ցւոց, մինչ նստէաք առ կաթսայս մսոյն
եւ ուտէաք հաց յագ, քան հանէք զմեզ
յանապատս յայս՝ սպանանել զամենայն
ժողովուրդս ի սովոյ:
4 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ահա ես տեղացից
ձեզ հաց յերկնից, եւ ելցէ ժողովուրդ [10]իմ
եւ ժողովեսցեն զօրըստօրէն, զի փորձեցից
զնոսա եթէ գնայցեն յօրէնս իմ եթէ ոչ:
5 Եւ եղիցի յաւուրն վեցերորդի պատրաս-
տեսցեն զոր ինչ բերիցենն, եւ եղիցի կրկին
քան զայն զոր օրըստօրէն ժողովիցեն:
6 Եւ ասեն Մովսէս եւ Ահարոն ցամենայն
ժողովուրդ որդւոցն Իսրայելի, Ընդ երե-
կոյս գիտասջիք եթէ Տէր եհան զձեզ
7 յերկրէն Եգիպտացւոց: Եւ առաւօտուց
տեսջիք զփառսն Տեառն, ի լսել նորա
զտրտունջ ձեր [11]զԱստուծոյ. այլ մեք ո՞վ
8 եմք զի տրտնջէք զմէնջ: Եւ ասէ Մով-
սէս, Ի տալ ձեզ Տեառն ընդ երեկոյս միս
ուտելոյ, եւ ընդ առաւօտս հաց յագ,
վասն լսելոյ Տեառն զտրտունջ ձեր զոր
դուք տրտնջեցէք [12]զմէնջ. քանզի մեք
ո՞վ եմք. զի ոչ զմէնջ է տրտունջդ ձեր,
9 այլ [11]զԱստուծոյ: Եւ ասէ Մովսէս ցԱ-
հարոն, Ասա ցամենայն ժողովուրդ որդ-
ւոցդ Իսրայելի, Մատերուք առա-
ջի Տեառն, քանզի լուաւ զտրտունջ ձեր:
10 Մինչդեռ խօսէր Ահարոն ընդ ամենայն
ժողովրդեան որդւոցն Իսրայելի, դարձան

[1]Եբր. ո՞վ իբրեւ զքեզ փառաւորեալ՝ ի սրբութեան, ահեղ գովութեամբք [2]Եբր ածեր [3]Կամ, խռովեցան [4]Եբր. Փղշտացւոց [5]Եբր. ի տեղի [6]Եբր. Օրհնեցէք [7]Եբր. զերիվարն եւ զհեծեալ նորա [8]Այսինքն, դառնութիւն

[9]Եբր. ձեռամբ Տեառն [10]Յեբր. պակասէ [11]Եբր. զՏեառնէ [12]Եբր զնմանէ

յանապատն, եւ ահա փառք Տեառն երեւե-
11 ցան ամպովն։ Եւ խօսեցաւ Տէր ընդ Մով-
12 սիսի եւ ասէ, Լուայ զտրտունջ որդւոցն
Իսրայելի. արդ խօսեաց ընդ նոսա եւ
ասասցես, Ընդ երեկոյս միս կերիջիք,
եւ ընդ առաւօտս հացիւ յագեսջիք. եւ
ծանիջիք թէ ես եմ Տէր Աստուած ձեր։
13 Եւ եղեւ ընդ երեկոյսն, եւ ել լորա-
մարգին եւ ծածկեաց զբանակն. եւ ե-
ղեւ ընդ առաւօտն՝ [1]ընդ արկանել ցօ-
14 ղոյն" շուրջ զբանակաւն, [2]Եւ ահա" ի
վերայ երեսաց անապատին մանր [3]իբրեւ
զգինձ, սպիտակ" իբրեւ զեղեամն ի վե-
15 րայ երկրին։ Իբրեւ տեսին զայն որդիքն
Իսրայելի, ասեն ընկեր ցընկեր, [4]Զի՞նչ
է այս". քանզի ոչ գիտէին զինչ իցէ. եւ
ասէ ցնոսա Մովսէս, Այդ է հացն զոր
16 ետ ձեզ Տէր ուտել։ Եւ այս բան է
զոր պատուիրեաց Տէր. Ժողովեցէք ի
դմանէ իւրաքանչիւր ըստ բաւականի
իւրում, [5]չափով ըստ գլխոյ, ըստ թուոյ
անձանց ձերոց, ըստ իւրաքանչիւր ըստ
17 վրանս ձեր ժողովեցէք։ Եւ արարին այն-
պէս որդիքն Իսրայելի. եւ ժողովեցին,
18 որ շատ եւ որ սակաւ։ Եւ չափեցին
[6]չափովն. որոյ շատն էր՝ ոչ յաւելաւ,
եւ որոյ սակաւն էր՝ ոչ պակասեաց. իւ-
րաքանչիւր ըստ բաւականի իւրում ժո-
19 ղովեցին։ Եւ ասէ ցնոսա Մովսէս, Մի՛ ոք
20 թողուցու այտի յայգ։ Եւ ոչ լուան Մով-
սիսի, այլ թողին ոմանք ի նմանէ յայգ, եւ
եռաց ի նմա որդն եւ նեխեցաւ. եւ դառ-
21 նացաւ ի նոսա Մովսէս։ Եւ քաղէին այգուն
այգուն իւրաքանչիւր ըստ բաւականի իւ-
րում. եւ իբրեւ արեւն ջեռնոյր, հալէր։
22 Եւ եղեւ յաւուրն վեցերորդի ժողովե-
ցին զպէտսն կրկին՝ երկուս [7]չափս առ
մի մի. եւ մտին ամենայն իշխանք ժո-
23 ղովրդեանն եւ պատմեցին Մովսիսի։ Ասէ
ցնոսա Մովսէս, Այս բան է զոր խօսե-
ցաւ Տէր. Շաբաթ հանգիստ սուրբ Տեառն
վաղիւ, որ ինչ եփելոց էք՝ եփեցէք, եւ
որ ինչ հասուցանելոց էք՝ հասուցէք, եւ
զամենայն զաւելորդն թողուցուք յա-
24 մանս մինչեւ ցառաւօտ։ Եւ թողին ի
նմանէ յայգ, որպէս հրամայեաց նոցա
Մովսէս. եւ ոչ նեխեցաւ, եւ ոչ եղեւ
25 ի նմա որդն։ Եւ ասէ Մովսէս, Կերայք
զայգ այսօր, քանզի շաբաթ Տեառն է
այսօր. ոչ գտանէք այսօր զայգ ի դաշ-
26 տի։ Զվեց օր ժողովեցէք զայդ, եւ յա-
ւուրն եւթներորդի շաբաթ, ոչ լինիցի
27 ի նմա։ Եւ եղեւ յաւուրն եւթներորդի
ելին ոմանք ի ժողովրդենէ անտի քաղել,
28 եւ ոչ գտին։ Եւ ասէ Տէր ցՄովսէս,
Մինչեւ յե՞րբ ոչ կամիք լսել պատուի-
29 րանաց իմոց եւ օրինաց։ Տեսէք զի Տէր
ետ ձեզ զօրս զայս շաբաթ, վասն այ-
նորիկ ինքն ետ ձեզ յաւուրն վեցերորդի
հաց երկուց աւուրց. նստարուք իւրա-
քանչիւր [8]ի տունս ձեր," եւ մի՛ ոք ե-
լանիցէ ի տեղւոջէ իւրմէ յաւուրն եւթ-
30 ներորդի։ Եւ շաբաթացաւ ժողովուրդն
31 յաւուրն եւթներորդի։ Եւ անուանեցին
որդիքն Իսրայելի զանուն նորա Ման. եւ
նա էր իբրեւ զսերմն գինձոյ՝ սպիտակ,
եւ համ նորա իբրեւ զխորիսխ մեղու։
32 Եւ ասէ Մովսէս, Այս բան է զոր հրա-
ման ետ Տէր. Լցէք [9]լի չափով զմա-
նանայդ յաման մի, եւ պահեցէք" յազգս
ձեր, զի [10]տեսանիցեն զհացդ զոր [11]կե-
րայք դուք" յանապատի աստ ի ժամա-
նակի իբրեւ [12]եհան զձեզ Տէր" յերկրէն
33 Եգիպտացւոց։ Եւ ասէ Մովսէս ցԱհարոն,
Առ սափոր մի [13]ոսկի, եւ արկցես ի նմա
լի [6]չափովդ մանանայ, եւ դիցես զդա
առաջի [14]Աստուծոյ ի պահեստ յազգս ձեր։
34 Որպէս հրաման ետ Տէր Մովսիսի, եւ
եդ զայն Ահարոն առաջի Վկայութեանն
35 ի պահեստ։ Եւ որդիքն Իսրայելի կերան
զմանանայն զքառասուն ամ, մինչեւ ե-
կին ի շէն երկիրն զմանանայն ուտէին,
36 մինչեւ հասին [15]ի կողմն Փիւնիկեցւոց"։ Եւ
[16]չափն էր տասներորդ [17]երից գրուից"։

## ԳԼ. ԺԷ

1 Եւ չուեաց ամենայն ժողովուրդ որդ-
ւոցն Իսրայելի ի Սինն անապատէ ըստ
բանակս իւրեանց բանիւ Տեառն, եւ
բանակեցան յՌափիդիմ. եւ ոչ գոյր ջուր
2 ըմպել ժողովրդեանն։ Եւ բամբասէր ժո-
ղովուրդն զՄովսէս եւ ասէին, Տուր մեզ

---

[1]Եբր. Հանգեաւ ցօղն [2]Եբր. Եւ իբրեւ վերացաւ ցօղն որ հանգեաւ, ահա էր [3]Եբր. թեփածեւ ինչ, մանր [4]Եբր. Մանհու (յորմէ Մանանայ) [5]Եբր. օմէր [6]Եբր. օմէրիւ [7]Եբր. օմէրս

[8]Եբր. ի տեղւոջ իւրում [9]Եբր. զօմէրն անտի պահել [10]Եբր. տեսանիցեն [11]Եբր. ետու ձեզ ուտել [12]Եբր. հանի զձեզ [13]Յեբր. պակասէ [14]Եբր. Տեառն [15]Եբր. ի սահմանս երկրին Քանանացւոց [16]Եբր. օմէրն [17]Կամ արդուի

ջուր զի արբցուք. եւ ասէ ցնոսա Մով-
սէս՝, Զի՞ բամբասէք զիս, եւ զի՞ փոր-
3 ձէք զՏէր։ Եւ ծարաւեաց անդ ժողո-
վուրդն ի ջրոյ. եւ տրտնջեաց ժողո-
վուրդն զՄովսիսէ, եւ ասեն, Ընդէ՞ր հա-
ներ զմեզ յԵգիպտոսէ, կոտորել զմեզ եւ
զորդիս մեր եւ զխաշինս մեր ի ծարաւոյ։
4 Եւ բողոքեաց Մովսէս առ Տէր եւ
ասէ, Զի՞նչ արարից ժողովրդեանս այս-
միկ, սակաւիկ մեւս եւս, եւ քարկոծ
5 առնիցեն զիս։ Եւ ասէ Տէր ցՄովսէս,
Երթ առաջի ժողովրդեանդ, եւ առ ընդ
քեզ ի ծերոց ժողովրդեանդ. եւ զգաւա-
զանն քո որով հարեր զգետն՝ առ ի ձե-
6 ռին քում, եւ երթիցես։ Եւ ես հաս-
եալ կայցեմ անդ յառաջագոյն քան զքեզ
ի վերայ վիմին ի Քորեբ. եւ հարցես
զվէմն եւ ելցէ ի նմանէ ջուր, եւ արբ-
ցէ ժողովուրդդ։ Եւ արար այնպէս Մով-
7 սէս առաջի [1]որդւոցն Իսրայելի։ Եւ ա-
նուանեաց զանուն տեղւոյն այնորիկ
[2]Փորձութիւն եւ Բամբասանս”. վասն
բամբասանաց որդւոցն Իսրայելի եւ վասն
փորձելոյ նոցա զՏէր եւ ասելոյ, Եթէ
իցէ՞ ի մեզ Տէր եւ եթէ ոչ։
8 Եկն Ամաղէկ, եւ տայր պատերազմ
9 ընդ Իսրայելի յՌափիդիմ։ Եւ ասէ Մով-
սէս ցՅեսու, Ընտրեա դու [3]քեզ այս
զօրաւորս”, եւ ելեալ տայցես պատերազմ
ընդ [4]Ամաղեկայ առ վաղիւ. եւ ահա ես
եկեալ” կայցեմ ի վերայ գլխոյ բլրոյն,
եւ գաւազանն Աստուծոյ ի ձեռին իմում։
10 Եւ արար Յեսու որպէս ասաց նմա Մով-
սէս, եւ ճակատեցաւ յանդիման Ամա-
ղեկայ. եւ Մովսէս եւ Ահարոն եւ Ովր
11 ելին ի գլուխ բլրոյն։ Եւ լինէր յորժամ
ամբառնայր Մովսէս զձեռս իւր, զօրա-
նայր Իսրայէլ. եւ յորժամ խոնարհեցու-
ցանէր զձեռս իւր, զօրանայր Ամաղէկ։
12 Եւ ծանրէին ձեռքն Մովսիսի, եւ առ-
եալ վէմ դնէին ընդ նովաւ, եւ նստէր ի
վերայ նորա. եւ Ահարոն եւ Ովր հաս-
տատէին զձեռս նորա, մի աստի եւ մի
անտի, եւ լինէին ձեռքն Մովսիսի հաս-
տատեալք մինչեւ ցմտանել արեգականն։
13 Եւ եհար Յեսու զԱմաղէկ եւ զամենայն
14 զօրս նորա կոտորմամբ սրոյ։ Եւ ասէ Տէր
ցՄովսէս, Գրեա զայդ առ ի յիշատակ ի
գիրս, եւ տուր յականջս Յեսուայ, զի
ջնջելով ջնջեցից զյիշատակ Ամաղեկայ

[1] Եբր. ծերոցն [2] Եբր. Մասսա եւ Մերիբա
[3] Եբր. մեզ արս [4] Եբր. Ամաղեկայ. առ վաղիւ ես

15 յերկրէ ի ներքոյ երկնից։ Եւ շինեաց Մով-
սէս սեղան [5]Տեառն, եւ անուանեաց զա-
16 նուն նորա՝ Տէր ապաւէն իմ, Եւ ասէ,
Զի [6]ծածուկ ձեռամբ Տեառն պատերազմի
Տէր” ընդ Ամաղեկայ ազգաց յազգս։

## ԳԼ. ԺԸ

1 Եւ լուաւ Յոթոր քուրմ Մադիամու ա-
ներ Մովսիսի զամենայն զոր արար Տէր
ընդ Մովսիսի եւ Իսրայելի ժողովր-
դեան իւրում, զի եհան Տէր զԻսրայէլ
2 յԵգիպտոսէ։ Եւ առ Յոթոր աներ Մով-
սիսի զՍեպփովրա զկին Մովսիսի՝ յետ
3 [7]թողլոյն զնա. Եւ զերկուս որդիս նո-
րա, յորոց միումն անուն էր Գերսամ,
4 ասէ, Պանդուխտ էի յօտար երկրի. Եւ
անուն երկրորդին Եղիազար, ասէ, Աս-
տուած հօր իմոյ օգնական իմ, եւ ապրե-
5 ցոյց զիս ի ձեռաց Փարաւոնի։ Եւ եկն
Յոթոր աներն Մովսիսի եւ որդիք նորա
եւ կին նորա առ Մովսէս յանապատն,
ուր բնակեալ էր ի լերինն Աստուծոյ։
6 Ազդ եղեւ Մովսիսի եւ ասեն, թէ Ահա
աներ քո Յոթոր գայ առ քեզ, եւ կին
7 քո եւ երկու որդիք քո ընդ նմա։ Ել
Մովսէս ընդ առաջ աներոյն իւրոյ, եւ
երկիր եպագ նմա եւ համբուրեաց զնա.
եւ ողջոյն ետուն միմեանց ի խաղաղու-
8 թիւն, եւ տարաւ զնոսա ի խորանն։ Եւ
պատմեաց Մովսէս աներոյն իւրում զա-
մենայն ինչ զոր արար Տէր ընդ Փարա-
ւոն եւ ընդ Եգիպտացիսն վասն Իսրայե-
լի, եւ զամենայն աշխատութիւնս որ եղեւ
նոցա ի ճանապարհի, եւ զի ապրեցոյց
9 զնոսա Տէր։ Եւ [8]զարմացաւ Յոթոր ի
վերայ ամենայն բարեացն զոր արար նո-
ցա Տէր, եւ զի ապրեցոյց զնոսա ի ձեռաց
Եգիպտացւոցն [5]եւ ի ձեռաց Փարաւոնի”։
10 Եւ ասէ Յոթոր, Օրհնեալ է Տէր որ ապ-
րեցոյց [9]զդոսա ի ձեռաց Եգիպտացւոցն
եւ ի ձեռաց Փարաւոնի. զի փրկեաց
զժողովուրդդ ի ներքուստ ձեռինն Եգիպ-
11 տացւոց։ Արդ գիտեմ թէ մեծ է Տէր
քան զամենայն աստուածս. [10]վասն այ-
նորիկ զի բռնանային ի վերայ դոցա”։
12 Եւ առ Յոթոր աներն Մովսիսի ողջա-

[5] Եբր. դրօշէ [6] Եբր. ձեռն ի վերայ աթոռոյ Տեառն, պատերազմ Տեառն [7] Եբր. յղելոյն
[8] Եբր. ուրախ եղեւ [9] Եբր. զձեզ [10] Եբր. զի յորում ամբարտաւանէին՝ եղեւ ընդ-դէմ նոցա

կէզս եւ զոհս Աստուծոյ. եւ գնացին
Մովսէս եւ Ահարոն եւ ամենայն ծերքն
Իսրայելի՝ ուտել հաց ընդ աներոյն Մով-
սիսի առաջի [1]Տեառն։
13 Եւ եղեւ ի վաղիւ անդր նստաւ Մով-
սէս դատել զժողովուրդն. եւ կայր ա-
մենայն ժողովուրդն շուրջ զՄովսիսիւ,
14 յառաւօտէ մինչեւ ցերեկոյ։ Եւ տեսեալ
Յոթորայ զամենայն ինչ զոր առնէր ժո-
ղովրդեանն, եւ ասէ, Զի՞նչ է բանդ այդ
զոր առնես դու ժողովրդեանդ. ընդէ՞ր
դու նստիս միայն, եւ ամենայն ժողո-
վուրդդ կայ շուրջ զքեւ յառաւօտէ մին-
15 չեւ ցերեկոյ։ Եւ ասէ Մովսէս ցաներն
իւր, Քանզի գայ ժողովուրդդ առ իս
16 խնդրել իրաւունս յԱստուծոյ։ Յորժամ
լինիցի ինչ դոցա հակառակութիւն, գան
առ իս, եւ ես ընտրեմ ի մէջ իւրաքան-
չիւր ուրուք, եւ իմացուցանեմ դոցա
զհրամանս Աստուծոյ եւ զօրէնս նորա։
17 Եւ ասէ ցնա աներն Մովսիսի, Ոչ է ու-
18 ղիղ բանդ զոր առնես։ Անհնարին տա-
ժանօք տանջիս դու եւ ամենայն ժողո-
վուրդդ որ է ընդ քեզ. ծանր է քեզ
բանդ այդ, ոչ կարես միայն առնել։
19 Բայց արդ լուր ինձ, եւ տաց քեզ խրատ,
եւ եղիցի Աստուած ընդ քեզ։ Լեր դու
ժողովրդեանդ առ ի յԱստուծոյ, եւ մատու-
20 ցես դու զբանս դոցա առ Աստուած. Եւ
դիցես դոցա վկայութիւն զհրամանացն
[2]Աստուծոյ եւ զօրինաց նորա", եւ ցուց-
ցես դոցա ճանապարհս յորս գնասցեն, եւ
21 զգործս զոր գործիցեն։ Եւ դու տես քեզ
յամենայն ժողովրդենէդ արս զօրաւորս,
աստուածապաշտս, արս արդարակորովս
որ ատիցեն [3]զհպարտութիւն, եւ կա-
ցուսցես զնոսա ի վերայ դոցա հազարա-
պետս եւ հարիւրապետս եւ յիսնապետս
22 եւ տասնապետս. Եւ դատեսցին զժողո-
վուրդդ յամենայն ժամ. եւ զբան ինչ
մեծ առ քեզ հասուցանիցեն, եւ զփոքր
ինչ դատաստան՝ ինքեանք դատեսցին. եւ
թեթեւացուսցեն ի քէն, եւ եղիցին քեզ
23 օգնականք։ Եթէ զայս բան արասցես,
զօրացուսցէ զքեզ Աստուած, եւ կա-
րասցես տոկալ, եւ ամենայն ժողովուրդդ
երթիցէ ի տեղի իւր խաղաղութեամբ։
24 Եւ լուաւ Մովսէս ձայնի աներոյն իւ-
րոյ, եւ արար զամենայն որ միանգամ
25 ասաց նմա։ Եւ ընտրեաց Մովսէս յա-
մենայն Իսրայելէ արս զօրաւորս, եւ արար
զնոսա ի վերայ նոցա հազարապետս եւ
հարիւրապետս եւ յիսնապետս եւ տաս-
26 նապետս։ Եւ դատէին զժողովուրդն յա-
մենայն ժամ. բայց զբան ինչ մեծ հասու-
ցանէին առ Մովսէս, եւ զամենայն բան
27 թեթեւ՝ ինքեանք դատէին։ Եւ արձակեաց
Մովսէս զաներն իւր, եւ գնաց յերկիր իւր։

ԳԼ. ԺԹ

1 Յամսեանն երրորդի ելանելոյ որդւոցն
Իսրայելի յերկրէն Եգիպտացւոց, յաւուրն
2 յայնմիկ եկին յանապատն Սինայ։ Չուե-
ցին յՌափիդիմայ եւ եկին յանապատն
Սինայի, եւ բանակեցան յանապատի
անդ. եւ բանակեցաւ Իսրայէլ անդ հան-
3 դէպ լերինն։ Եւ Մովսէս ել [4]ի լեառնն
Աստուծոյ". եւ կոչեաց զնա [5]Աստուած
ի լեռնէ անտի եւ ասէ, Այսպէս ասաս-
ցես տանն Յակոբայ, եւ պատմեսցես
4 որդւոցն Իսրայելի. Դուք ձեզէն տեսէք
որչափ ինչ արարի ընդ Եգիպտացիսն,
եւ առի զձեզ իբրեւ ի վերայ թեւոց
5 արծուոյ եւ յարեցի զձեզ առ իս։ Եւ արդ՝
եթէ լսելով լուիցէք ձայնի իմում, եւ
պահիցէք զուխտն իմ, եղիջիք դուք ինձ
ժողովուրդ սեպհական յամենայն ազգաց.
6 զի իմ է ամենայն երկիր։ Եւ դուք եղի-
ջիք ինձ ի թագաւորութիւն [6]եւ ի քա-
հանայութիւն" եւ յազգ սուրբ. զայս
բանս խօսեսցիս ընդ որդիսն Իսրայելի։
7 Եկն Մովսէս եւ կոչեաց զծերս ժողո-
վրդեանն, եւ եդ առաջի նոցա զամենայն
զբանս զայսոսիկ զոր պատուիրեաց նմա
8 [5]Աստուած։ Պատասխանի ետ ժողովուրդն
միահամուռ եւ ասեն, Զամենայն ինչ զոր
ասաց [5]Աստուած, արասցուք [7]եւ լուի-
ցուք"։ Եւ տարաւ Մովսէս զպատգամս
ժողովրդեանն առ [5]Աստուած։
9 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ահաւասիկ
ես եկից առ քեզ [8]սեամբ ամպոյ, զի
լուիցէ ժողովուրդն մինչ ես ընդ քեզ
խօսիցիմ, եւ հաւատասցեն քեզ յաւի-
տեան։ Եւ պատմեաց Մովսէս զբանս
10 ժողովրդեանն առ Տէր։ Եւ ասէ Տէր
ցՄովսէս, [9]Էջ զիր վկայութիւն ժողո-
վրդեանն" եւ սրբեա զնոսա այսօր եւ
վաղիւ, եւ լուասցեն զձորձս իւրեանց,

---

[1] Եբր. Աստուծոյ [2] Եբր. և զօրինաց [3] Եբր. զօշաքաղութիւն

[4] Եբր. առ Աստուած [5] Եբր. Տէր [6] Եբր. քահանայից [7] Եբր. պակասի [8] Եբր. ի մթութեան [9] Եբր. Երթ առ ժողովուրդն

11 Եւ պատրաստեսցին աւուրն երրորդի. զի
յաւուրն երրորդի իջցէ Տէր յանդիման
ամենայն ժողովրդեանդ ի լեառնդ Սի-
12 նա։ Եւ զատուսցես զժողովուրդն չուրջ՝
եւ ասասցես, Զգոյշ կացէք անձանց յե-
լանելոյ ի լեառնն եւ մերձենալոյ ի նա.
զի ամենայն որ մերձեսցի ի լեառնն՝ մա-
13 հու սատակեսցի։ Մի՛ մերձեսցի ի նա
ձեռն. քանզի քարամբ քարկոծեսցի եւ
նետիւք խոցոտեսցի. եթէ անասուն իցէ
եւ եթէ մարդ, մի՛ կեցցէ. այլ [1]յորժամ
ձայնքն եւ փողն եւ ամպն վերասցին ի
լեռնէ անտի," ելանիցեն նոքա ի լեառնն։
14 Եւ էջ Մովսէս ի լեռնէ անտի առ ժո-
ղովուրդն, եւ սրբեաց զնոսա. եւ լուա-
15 ցին զձորձս իւրեանց։ Եւ ասէ ցժողո-
վուրդն, Պատրաստ լերուք [2]զերիս ա-
ւուրս". ի կանայս մի՛ մերձենայք։
16 Եւ եղեւ յաւուրն երրորդի ընդ ա-
ռաւօտն ձայնք եւ փայլատակունք եւ
ամպ մթախառն ի վերայ լերինն [3]Սի-
նայի լինէին, եւ ձայն փողոյն հնչէր մե-
ծաձայն, եւ զարհուրեցաւ ամենայն ժո-
17 ղովուրդն որ էր ի բանակի անդ։ Եւ
եհան Մովսէս զժողովուրդն ընդ առաջ
Աստուծոյ ի բանակէ անտի, եւ [4]կացոյց
18 չուրջ" զստորոտով լերինն [3]Սինայի։ Եւ
լեառն Սինա ծխէր առ հասարակ, քանզի
իջեալ կայր [5]Աստուած ի վերայ նորա
հրով, եւ ելանէր ծուխ նորա իբրեւ զծուխ
հնոցի, եւ [6]զարհուրեցաւ ամենայն ժո-
19 ղովուրդն յոյժ։ Քանզի" հասանէին ձայնք
փողոյն ի բաց, յառաջացեալք եւ սաստ-
կացեալք յոյժ, Մովսէս խօսէր, եւ Աս-
20 տուած տայր նմա ձայն։ Եւ էջ Տէր ի
լեառնն Սինա, ի գլուխ լերինն. եւ կոչ-
եաց Տէր զՄովսէս ի գլուխ լերինն, եւ
21 ել անդր Մովսէս։ Եւ խօսեցաւ [5]Աստ-
ուած ընդ Մովսիսի եւ ասէ, Էջ, զեր
վկայութիւն ժողովրդեանդ, գուցէ մեր-
ձենայցեն հայել առ [5]Աստուած, եւ ան-
22 կանիցին բազումք ի նոցանէ։ Եւ քա-
հանայքն որ մերձենան առ [5]Աստուած՝
սրբեսցին, գուցէ սատակիցէ ի նոցանէ
23 Տէր։ Եւ ասէ Մովսէս [7]ցԱստուած, Ոչ
կարէ ժողովուրդն ելանել ի լեառնն Սի-
նա. զի դու իսկ իսկ ուխտեցեր մեզ եւ
ասացեր, եթէ Զատուսցես զլեառնս եւ
24 սրբեսցես զդա։ Եւ ասէ ցնա Տէր, Երթ
էջ, եւ ել այսրէն դու եւ Ահարոն ընդ
քեզ. բայց քահանայքն եւ ժողովուրդն
մի՛ ժտեսցին ելանել առ [5]Աստուած,
25 գուցէ սատակիցէ ի նոցանէ Տէր։ Էջ
Մովսէս առ ժողովուրդն եւ ասէ ցնոսա։

ԳԼ. Ի

1 Խօսեցաւ [8]Տէր զամենայն զպատգամս
զայսոսիկ եւ ասէ,
2 Ես եմ Տէր Աստուած քո որ հանի զքեզ
յերկրէն Եգիպտացւոց ի տանէ ծառա-
յութեան։
3 Մի՛ եղիցին քեզ այլ աստուածք բաց
յինէն։
4 Մի՛ արասցես դու քեզ կուռս ըստ ա-
մենայն նմանութեան որ ինչ յերկինս ի
վեր է, եւ որ ինչ յերկրի ի խոնարհ,
5 եւ որ ինչ ի ջուրս ի ներքոյ երկրի. Մի՛
երկիր պագանիցես նոցա, եւ մի՛ պաշ-
տեսցես զնոսա. զի ես եմ Տէր Աստուած
քո, Աստուած նախանձոտ, որ հատու-
ցանեմ զմեղս հարանց որդւոց, յերիս եւ
6 ի չորս ազգս ատելեաց իմոց. Եւ առնեմ
ողորմութիւն ի հազար ազգս սիրելեաց
իմոց, եւ ոյք պահեն զհրամանս իմ։
7 Մի՛ առնուցուս զանուն Տեառն Աս-
տուծոյ քո ի վերայ սնոտեաց. զի ոչ
սրբեսցէ Տէր զայն որ առնուցու զա-
նուն նորա ի վերայ սնոտեաց։
8 Յիշեսջիր զօրն շաբաթուց սրբել զնա։
9 Զվեց օր գործեսցես, եւ արասցես զա-
10 մենայն զգործս քո. Յաւուրն եւթներորդի
շաբաթ Տեառն Աստուծոյ քո. մի՛ գոր-
ծեսցես ի նմա զամենայն գործ քո, դու եւ
ուստր քո եւ դուստր քո, ծառայ քո եւ
աղախին քո, [9]եզն քո եւ էշ քո եւ ամենայն
անասուն քո, եւ եկն" քո եւ պանդուխտն
11 որ ի քեզ. Զի զվեց օր արար Տէր Աստ-
ուած զերկինս եւ զերկիր, եւ զծով եւ
զամենայն որ ի նոսա, եւ հանգեաւ յա-
ւուրն եւթներորդի. վասն այնորիկ օրհ-
նեաց Տէր զօրն եւթներորդ եւ սրբեաց զնա։
12 Պատուեա զհայր քո եւ զմայր քո [3]զի
քեզ բարի լիցի, եւ" զի երկայնակեաց
լինիցիս ի վերայ երկրին [3]բարութեան
զոր Տէր Աստուած քո տացէ քեզ։
13 Մի՛ սպանաներ։
14 Մի՛ շնար։
15 Մի՛ գողանար։

[1]Եբր. յերկարել փողոյն [2]Եբր. յօրն երրորդ [3]Յեբր. դ-խ-ե [4]Եբր. կացին [5]Եբր. Տէր [6]Եբր. դողայր ամենայն լեառնն, (19) Եւ [7]Եբր. ցՏէր

[8]Եբր. Աստուած [9]Եբր. և անասուն

16 Մի՛ սուտ վկայութիւն վկայեր զըն-
կերէ քումմէ ։
17 Մի՛ ցանկանար տան ընկերի քո, [1]եւ մի՛
անդոյ նորա՝՝ մի՛ ցանկանար կնոջ ընկերի
քո, եւ մի՛ ծառայի նորա, եւ մի՛ աղախնոյ
նորա, եւ մի՛ եզին նորա, եւ մի՛ իշոյ
նորա, [1]եւ մի՛ ամենայն անասնոյ նորա՝՝
եւ մի՛ ամենայնի զինչ ընկերի քո իցէ։
18 Եւ ամենայն ժողովուրդն տեսանէր
զձայնն եւ զճառագայթսն եւ զբարբառ
փողոյն եւ զլեառնն ծխեալ ։ Զահի հա-
րեալ ամենայն ժողովուրդն եւ խորշեցեալ
19 եկաց ի հեռաստանէ . Եւ ասեն ցՄովսէս,
Դու խօսեաց ընդ մեզ եւ լուիցուք, եւ մի՛
խօսեսցի ընդ մեզ Աստուած, գուցէ մե-
20 ռանիցիմք։ Եւ ասէ ցնոսա Մովսէս, Քաջա-
լերեցարուք, զի վասն փորձելոյ զձեզ եկն
առ ձեզ Աստուած, որպէս զի լինիցի եր-
կեւղ նորա ի ձեզ, զի մի՛ մեղանչիցէք։
21 Եւ կայր ժողովուրդն ի հեռաստանէ . եւ
Մովսէս եմուտ ի մէգն ուր էր Աստուած։
22 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Այսպէս ա-
սասցես զու [1]տանդ Յակոբայ, եւ պատ-
մեսցես՝՝ որդւոցդ Իսրայէլի, Դուք ձեզէն
23 տեսէք, զի յերկնից խօսեցայ ընդ ձեզ. Մի՛
առնիցէք ձեզ աստուածս ոսկեղէնս եւ
24 աստուածս արծաթեղէնս ։ Սեղան հողե-
ղէն արասջիք ինձ, եւ մատուսջիք ի նմա
զողջակէզս ձեր եւ [2]զփրկութիւնս ձեր,
զոչխարս ձեր եւ զարջառս ձեր, յամե-
նայն տեղիս ուր անուանեցից զանուն իմ
անդ, եկից առ քեզ եւ օրհնեցից զքեզ։
25 Ապա եթէ սեղան ի քարանց առնիցես
ինձ, մի՛ շինեսցես զնոսա կոփածոյս. քանզի
զձեռնգործին քո մերձեցուցեր ի նա,
26 եւ պղծեալ է ։ Մի՛ ելանիցես ընդ աս-
տիճանս ի սեղան իմ, զի մի՛ մերկա-
ցին առականք քո ի վերայ նորա ։

ԳԼ. ԻԱ

1 Եւ այս իրաւունք են զոր դիցես առա-
ջի նոցա ։
2 Եթէ գնեսցես ծառայ Եբրայեցի, վեց
ամ ծառայեսցէ քեզ, եւ յամին եւթ-
3 ներորդի գնասցէ ազատ ձրի։ Եթէ ինքն
միայն մտեալ իցէ, միայն գնասցէ . եւ
եթէ կնաւ հանդերձ մտեալ իցէ, ելցէ եւ
4 կինն ընդ նմա։ Ապա եթէ տէրն իւր տացէ
նմա կին, եւ ծնանիցի նմա ուստերս եւ
դստերս, կինն եւ որդիք՝ տեառն նորա

[1] Եբր. գոլով [2] Եբր. զխաղաղականս

5 եղիցին, եւ նա միայն ելցէ ։ Ապա եթէ
պատասխանի տուեալ ասիցէ ծառայն,
Սիրեցի զտէր իմ եւ զկին իմ եւ զոր-
դիս իմ, եւ ոչ գնամ յազատութիւն,
6 Տարցի զնա տէրն իւր յատեան Աստուծոյ,
եւ ապա մատուսցէ զնա առ սեամս դրանն.
եւ ծակեսցէ զունկն նորա հերեամբ,
եւ ծառայեսցէ նմա յաւիտեան ։
7 Իսկ եթէ վաճառեսցէ ոք զդուստր
իւր յաղախնութիւն, մի՛ գնասցէ որպէս
8 ելանիցեն [3]աղախնայք ։ Եթէ ոչ լինիցի
հաճոյ յաչս տեառն իւրոյ որում հաս-
տատեցաւն, փրկեսցէ զնա . բայց յազգ
օտար չէ իշխան վաճառել, զի անար-
9 գեաց զնա։ Ապա թէ որդւոյ իւրում հաս-
տատեսցէ զնա, ըստ օրինաց դստերաց
10 արասցէ նմա ։ Ապա թէ առ նովաւ այլ
առնուցու, [4]զօրէնն եւ զհանդերձ նորա
եւ զմերձաւորութիւն մի՛ հատցէ ի նմանէ։
11 Ապա թէ զերիս զայսոսիկ ոչ առնիցէ նմա,
ձրի ելցէ առանց արծաթոյ ։
12 Եթէ հարցէ ոք զոք եւ մեռանիցի,
13 մահու մեռցի եւ նա ։ Իսկ որ ոչ կա-
մաւ՝ այլ Աստուած մատնեաց ի ձեռս
նորա, տացի նմա տեղի ուր փախիցէ
14 սպանօղն ։ Իսկ եթէ մտարերեսցէ ոք
յընկեր իւր սպանանել զնա նենգու-
թեամբ եւ փախիցէ, եւ ի սեղանոյ իմ-
մէ առնուցուս զնա եւ սպանանիցես ։
15 Որ հարկանէ զհայր իւր կամ զմայր
իւր, մահու մեռցի ։
16 Որ ոք գողասցի [5]յորդւոցն Իսրայէլի՝՝
եւ վաճառեսցէ զնա, եւ գտցի առ նմա,
մահու մեռցի ։
17 Որ [6]բամբասեսցէ զհայր իւր կամ զմայր
իւր, մահու մեռցի ։
18 Եթէ կագիցեն արք երկու, եւ հար-
կանիցէ ոք ի նոցանէ զընկեր իւր քա-
րիւ կամ բռնցի, եւ ոչ մեռանիցի, այլ
19 զնիցի ի մահիճս, Եթէ յառնիցէ այրն
եւ շրջիցի արտաքոյ ի ցպոյ, անպարտ
լիցի որ եհարն, բայց զխափանածոյ նո-
րա եւ զբժշկութեանն տուժեսցի ։
20 Եթէ ոք հարցէ զծառայ իւր կամ զա-
ղախին իւր գաւազանաւ, եւ մեռցի ի
ձեռանէ նորա, դատաստանաւ վրէժ-
21 խնդրութիւն լիցի. Բայց թէ մի օր կամ
երկուս կեցցէ, մի՛ խնդրեսցի վրէժն.
զի զինք արծաթոյ իւրոյ են ։
22 Իսկ եթէ կռուիցին արք երկու, եւ

[3] Եբր. ծառայք [4] Այլօրինակ, զկերակուր [5] Եբր. մարդ [6] Եբր. անիծցէ

հարկանիցեն զկին յղի եւ ելանիցէ սաղմն
[1]աննկար, կէս վնասու" տուժեսցի, որ-
չափ ինչ արկանիցէ նմա այր կնոջն, եւ
23 տացէ [2]աղաչելով։ Ապա եթէ [3]կերպարան-
24 եալ իցէ", տացէ անձն ընդ անձին, Ակն ընդ
ական, ատամն ընդ ատաման, ձեռն ընդ
25 ձեռին, ոտն ընդ ոտին, Խարան ընդ խարա-
նի, վէր ընդ վիրի, հարուած ընդ հարուածոյ։
26 Իսկ եթէ հարցէ ոք զակն ծառայի
իւրոյ կամ զակն աղախնոյ իւրոյ, եւ
կուրացուսցէ, արձակեսցէ [4]զնոսա ա-
27 զատս" փոխանակ ական [5]նոցա։ Եւ եթէ
զատամն ծառայի իւրոյ, կամ զատամն
աղախնոյ թափեսցէ, արձակեսցէ [4]ա-
զատս փոխանակ ատաման [5]նոցա։
28 Իսկ եթէ հարցէ ցուլ զայր կամ զկին,
եւ մեռանիցին, ցուլն քարկոծ լիցի, եւ
միս նորա մի կերիցի. եւ տէր ցլուն
29 անպարտ լիցի։ Ապա թէ ցուլն հարկա-
նող իցէ յերէկն եւ յեռանդն, եւ բողոք-
եալ իցէ [6]տեառն նորա, եւ նորա չիցէ ի
միջոյ բարձեալ, եւ սպանանիցէ զայր կամ
զկին, ցուլն քարկոծ լիցի, եւ տէր ցլուն
30 առ նմին մեռցի։ Իսկ եթէ փրկանք ան-
կանիցին ի վերայ նորա, տացէ փրկանս
ընդ անձին իւրում, ըստ ամենայնի որ-
31 չափ ինչ արկանիցեն նմա գին։ Եւ եթէ
զուստր կամ զդուստր հարկանիցէ, ըստ
32 նմին օրինակի արասցեն նմա։ Իսկ եթէ
զծառայ կամ զաղախին հարկանիցէ ցուլն,
երեսուն [7]կրկին սատեր" արծաթ տացէ
տեառն նոցա, եւ ցուլն քարկոծ լիցի։
33 Իսկ եթէ բացցէ ոք հոր, կամ փո-
րեսցէ ջրհոր, եւ ոչ խփանիցէ զնա, եւ
34 անկանիցի անդ արջառ կամ էշ, Տէր
հորոյն տուժեսցի արծաթ եւ տացէ
տեառն նորա, եւ չարդիղն նորա լիցի։
35 Իսկ եթէ հարցէ ցուլ ուրուք զցուլ
ընկերի իւրոյ եւ մեռցի, վաճառեսցեն
զցուլն կենդանի, եւ բաժանեսցեն զգինս
նորա, եւ զցուլն սպանեալ՝ բաժանես-
36 ցեն։ Ապա եթէ յերէկն եւ յեռանդն
գիտէին զցուլն, եւ [8]բողոքեալ իցէ
տեառն նորա, եւ նորա չիցէ ի միջոյ
բարձեալ զնա," տուժեսցի ցուլ ընդ
ցլուն, եւ սպանեալն նորա լիցի։

[1] Եբր. նորա, և չար ինչ ոչ պատահիցէ, տու-
ժելով [2] Եբր. ըստ դատաւորաց [3] Եբր. չար
ինչ պատահիցէ [4] Եբր. զնա ազատ [5] Եբր.
նորա [6] Այլբնքն, ցտէր [7] Եբր. սիկղ [8] Եբր.
տեառն նորա չիցէ պահեալ զնա, տուժելով

ԳԼ. ԻԲ

1 Իսկ եթէ գողասցի ոք արջառ կամ ոչ-
խար, եւ սպանցէ կամ վաճառեսցէ,
հինգ արջառ ընդ արջառոյն տուժեսցի,
2 եւ չորս ոչխար ընդ ոչխարին։ Իսկ ե-
թէ յական գտանիցի գող, եւ խոցեալ
մեռանիցի, չէ այն նմա ի սպանութիւն։
3 Ապա եթէ արեւն ի վերայ նորա ծագի-
ցէ, մահապարտ է, [9]փոխարէն մեռցի".
ապա թէ ոչինչ գտանիցի նորա, վա-
ճառեսցի փոխանակ գողութեանն իւ-
4 րոյ։ Իսկ եթէ ըմբռնեսցի եւ գտցի ի
ձեռին նորա գողօնն՝ յարջառոյ եւ յէշոյ
մինչեւ ցոչխար, կրկին տուժեսցի։
5 Եթէ արածիցէ ոք զանդ կամ զայգի,
եւ թողլ տայցէ խաշին իւրում արածել
զանդ այլոց, [10]յիւրմէ անդոյ անտի տու-
ժեսցի ըստ արդեանն։ Ապա թէ զամենայն
իսկ զանդն արածիցէ,"զընտիր կողմն անդոյ
իւրոյ եւ զընտիր այգւոյ իւրոյ տուժեսցի։
6 Իսկ եթէ ելանիցէ հուր եւ գտանիցէ
փուշ, եւ ընդ նմին այրիցէ զկալ կամ
զօրան կամ զանդ, տուժելով տուժեսցի
որոյ զհրդեհն հանեալ իցէ։
7 Իսկ եթէ ոք տացէ ընկերի իւրում
արծաթ կամ այլ ինչ կարասի զիւր յա-
ւանդ, եւ գողանայցի ի տանէ առնն,
եթէ գտցի որ գողացաւն, կրկին տու-
8 ժեսցի. Ապա եթէ ոչ գտցի որ գողա-
ցաւն, մատիցէ տէր տանն առաջի [11]Ա-
տուծոյ, եւ երդուիցի եթէ իւր չէ նեն-
գեալ ամենեւին զաւանդ ընկերի իւրոյ։
9 Ըստ ամենայն [12]վնասակար բանի", յար-
ջառոյ եւ յէշոյ եւ յոչխարէ եւ ի հան-
դերձէ, եւ յամենայն կորստենէ [13]որում
վնասակար առնիցեն, որ զինչ իցէ" ա-
ռաջի [11]Աստուծոյ եկեսցէ դատաստան
երկոցուն, եւ [14]որ ոք ի նոցանէ
ըմբռնեսցի ի ձեռն Աստուծոյ", կրկին
տուժեսցի ընկերի իւրում։
10 Եւ եթէ տացէ ոք ընկերի իւրում էշ
կամ եզն կամ ոչխար կամ այլ ինչ ա-
նասուն ի պահեստ, եւ բեկցի կամ մեռ-
ցի կամ գերի վարեսցի, եւ ոչ ոք գի-
11 տասցէ, Երդումն [15]Աստուծոյ լիցի ի մէջ
երկոցուն, եթէ նենգանօք ինչ չիցէ

[9] Եբր. զի մարթ էր նմա տուժելով տուժել
[10] Եբր. պղեակ [11] Կամ, դատաւորաց [12] Եբր.
բանի անիրաւութեան [13] Եբր. զորմէ ասիցէ
թէ այս է այն [14] Եբր. զոր դատապարտեսցէ
Աստուած, կամ, դատապարտեսցեն դատաւորք
[15] Եբր. Տեառն

դնացեալ ամենեւին ընդ աւանդ ընկերին
իւրոյ. ապա յանձն առցէ տէր նորա, եւ մի՛
12 տուժեսցի։ Իսկ եթէ գողութեամբ գողա-
նայցի ի նմանէ, տուժեսցի տեառն նորա։
13 Ապա թէ գազանաբեկ լինիցի, [1]ածցէ
վկայ ի գէշ անդր՝, եւ մի՛ տուժեսցի։
14 Իսկ եթէ խնդրեսցէ ոք [2]անօթ յըն-
կերէ իւրմէ, եւ բեկցի կամ մեռցի [3]կամ
գերի գնասցէ՝, եւ տէր նորա չիցէ ընդ
15 նմա, տուժելով տուժեսցի. Ապա թէ
տէր նորա ընդ նմա իցէ, ոչ տուժեսցի.
ապա թէ ի վարձու առեալ իցէ, ընդ
վարձուց իւրոց եղիցի նմա։
16 Իսկ եթէ ոք խաբեսցէ զկոյս զոչ խօս-
եալ եւ ննջեսցէ ընդ նմա, վարձանօք
17 վարձեսցի զնա իւր կնութեան։ Եւ եթէ
ոչ առնուցու յանձն հայր նորա տալ զնա
նմա կնութեան, տուժեսցի արծաթ [3]հօր
նորա՝ որպէս լիցին վարձանք կուսից։
18 [4]Զկախարդս մի՛ ապրեցուցանիցէք։
19 Զամենայն որ խառնակիցի ընդ անա-
սուն՝ մահու սպանանիջիք։
20 Որ զից զոհիցէ՝ սատակեսցի, բայց
միայն Տեառն։
21 Զպանդուխտն մի՛ չարչարիցէք եւ մի՛
նեղիցէք զնա, զի եւ դուք պանդուխտք
22 էիք յերկրին Եգիպտացւոց։ Զամենայն
23 զայրի եւ զորբ մի՛ չարչարիցէք։ Ապա
եթէ չարչարելով չարչարիցէք զնոսա,
եւ բողոք բարձեալ աղաղակիցեն առ
24 իս, լսելով լուայց աղաղակի նոցա. Եւ
բարկացայց սրտմտութեամբ եւ կոտո-
րեցից զձեզ սրով, եւ եղիցին կանայք
ձեր այրիք եւ մանկունք ձեր որբք։
25 Եւ եթէ արծաթ փոխ տայցես [5]եղբօր
քում՝ որ աղքատ իցէ առ քեզ, մի՛ [6]ճե-
պեսցես զնա՝, եւ մի՛ արկանիցես նմա տո-
26 կոսիս։ Եւ եթէ գրաւեսցես զբաճկոն ըն-
կերի քո, նախ քան զմտանել արեւուդար-
27 ձուսցես անդրէն. Զի այն է վերարկու նո-
րա, եւ այն է հանդերձ [7]առականաց նորա
որով ննջիցէ. եւ եթէ բողոքիցէ առ իս,
լուայց նմա, քանզի ողորմած եմ։
28 [8]Զաստուածս քո՝ մի՛ բամբասիցես, եւ
զիշխան ժողովրդեան քո մի՛ հայհոյեսցես։
29 Զպտուղ կալոյ քո եւ զհնձանի մի՛
[9]հատանիցես. զանդրանիկս որդւոց քոց
30 ինձ տացես։ Նոյնպէս արասցես զար-
ջառ քո եւ զոչխար քո [3]եւ զէշ քո՝.
զեւթն օր եղիցի ընդ մայր իւրով, եւ
յաւուրն ութերորդի տացես զնա ինձ։
31 Եւ մարդք սուրբք լինիջիք ինձ. եւ
զմիս գազանաբեկին ի բացի՝ մի՛ ուտի-
ցէք, այլ շան ընկեսջիք։

ԳԼ. ԻԳ

1 Եւ զհամբաւ սուտ մի՛ [10]ընդունիցիս։
Մի՛ հաւանիցիս ընդ անիրաւի՝ լինել
2 վկայ անիրաւ։ Մի՛ յօժարեսցիս ընդ բա-
զումս ի չարիս։
Մի՛ յաւելուցուս ի բազմութիւն միտել
ընդ բազումս առ ի խոտորելոյ զիրաւունս։
3 Եւ մի՛ ողորմեսցիս տնանկին ի դատաս-
տանի։
4 Եւ եթէ պատահեսցես եզին թշնամւոյ
քո, կամ իշոյ նորա մոլորելոյ, դարձու-
5 ցես եւ հասուսցես զնա առ նա։ Եւ եթէ
տեսանիցես զգրաստ [11]ընկերի քո անկ-
եալ ընդ բեռամբ, մի՛ զանց առնիցես
զնովաւ, այլ յարուսցես զնա ընդ նմա։
6 Մի՛ խոտորեսցես զիրաւունս տնան-
7 կին ի դատաստանի իւրում։ [12]Յամե-
նայն ի զուր բանէ՝ ի բաց լինիցիս, եւ
զանպարտն եւ զարդարն մի՛ սպանանի-
ցես. [13]եւ զամպարիշտն մի՛ ապրեցու-
ցանիցես վասն կաշառի՝։
8 Եւ կաշառ մի՛ առնուցուս. զի կաշառ
կուրացուցանէ զաչս համարձակահայե-
ցաց, եւ ապականէ [14]զբանս արդարս՝։
9 Եւ զպանդուխտն մի՛ նեղիցես. քան-
զի ճանաչէք դուք զանձինս պանդխտաց.
զի եւ դուք պանդուխտք էիք յերկրին
Եգիպտացւոց։
19 Զվեց ամ սերմանեսցես զերկիր քո, եւ
11 ժողովեսցես զարմտիս նորա. Եւ յամին
եւթներորդի թողութիւն արասցես, եւ
հանգուսցես զնա, եւ կերիցեն տնանկք
ազգի քո, եւ զմնացեալն ի նոցանէ կե-
րիցեն գազանք վայրի. այնպէս արասցես
զայգի քո եւ զձիթենի քո։
12 Զվեց օր գործեսցես զգործ քո, եւ
յաւուրն եւթներորդի [15]հանգիցէ եզն քո
եւ էշ քո, եւ հանգիցէ որդի աղախնոյ
քո եւ [16]պանդխտին։

[1]Եբր. բերցէ զնա վկայ [2]Եբր. ինչ [3]Եբր. պակասէ [4]Եբր. Զկին կախարդ [5]Եբր. ումեք ի ժողովրդենէ իմմէ [6]Եբր. լիցիս նմա իբրեւ վաշխառու [7]Եբր. մերկութեան [8]Եբր. զԱստուած, կամ, զդատաւորս [9]Եբր. յամեցուցես

[10]Եբր. հանցես [11]Եբր. թշնամւոյ [12]Եբր. Ի բանէ ստութեան [13]Եբր. զի ոչ արդարացուցից զամպարիշտն [14]Եբր. զբանս արդարոց, կամ, զիրաւունս արդարոց [15]Եբր. դադարեսցիս, զի հանգիցէ [16]Եբր. պանդուխտն

13 Զամենայն զոր ասացի ձեզ՝ պահեսջիք.
եւ զանուն աստուածոց օտարաց մի՛ յի-
շիցէք, եւ մի՛ լուիցի ի բերանոյ ձերմէ։
14 Երիս ժամանակս ի տարւոջ արասջիք
15 ինձ տօնս։ Զտօն բաղարջակերացն պա-
հեսջիք. զեւթն օր բաղարջ կերիջիք,
որպէս պատուիրեցի ձեզ ըստ ժամա-
նակի ամսոյն կանխոց. զի ի նմա ելէք
դուք յերկրէն Եգիպտացւոց. ոչ երեւես-
16 ցիս առաջի իմ դատարկաձեռն. Եւ զտօն
[1]ամարայնոյ, առաջնոյ արմտեաց քոց,
[2]արասցես զգործոց քոց," որ ինչ վար-
եալ իցէ յանդի քում, եւ զտօն [3]կատա-
րածի ելից" տարւոյն՝ ի ժողովել զգործոց
17 քոց յանդէ։ Երիս ժամանակս ի տարւոջ
յանդիման լիցի ամենայն արու քո ա-
ռաջի Տեառն [4]Աստուծոյ։
18 Եւ մի՛ զոհեսցես ի վերայ խմորոյ զա-
րեան զոհից [5]քոց, եւ մի՛ ագցի ճարպ
19 տօնի իմոյ մինչեւ ցառաւօտ։ Զպտուղս
առաջին արմտեաց քոց բերցես ի տուն
Տեառն Աստուծոյ քո։
Եւ մի՛ եփեսցես [6]զգառն ի կաթն մօր
իւրոյ։
20 Եւ ահա ես առաքեմ զհրեշտակ իմ
առաջի երեսաց քոց, զի պահեսցէ զքեզ
ի ճանապարհի. որպէս զի տարցի զքեզ
21 յերկիրն՝ զոր պատրաստեցի քեզ։ Զգոյշ
լեր անձին քում եւ լուիցես նմա, եւ մի
անհաւան լինիցիս նմա. զի ոչ [7]խորշիցի ի
քէն", քանզի անուն իմ ի վերայ նորա
22 է։ Եւ եթէ լսելով լուիցես ձայնի իմում,
եւ արասցես զամենայն զոր ինչ ասացի
քեզ, եղէց թշնամի թշնամեաց քոց, եւ
հակառակ կացից հակառակորդաց քոց։
23 Զի երթիցէ հրեշտակ իմ առաջնորդ քեզ,
եւ տարցի զքեզ առ Ամորհացին եւ
Քետացի եւ Փերեզացի եւ Քանանացի եւ
[2]Գերգեսացի եւ" Խեւացի եւ Յեբուսա-
24 ցի, եւ սատակեցից զնոսա։ Մի՛ պագա-
նիցես երկիր աստուածոց նոցա, եւ մի՛
պաշտեսցես զնոսա, եւ մի՛ առնիցես ըստ
գործոց նոցա. այլ քակելով քակեսցես
զնոսա, եւ մանրելով մանրեսցես զար-
25 ձանս նոցա։ Եւ պաշտեսցես զՏէր Աս-
տուած քո, եւ [8]օրհնեսցից զհաց քո եւ
զջուր քո, եւ զարձուցից ի ձէնջ զախտ.
26 Եւ մի՛ եղիցի անծնանելի եւ ամուլ յերկրի
27 քում. զթիւ աւուրց քոց լցուցից։ Եւ
զահ իմ առաքեցից առաջնորդել քեզ,
եւ զարհուրեցուցից զամենայն ազգս յորս
մտանիցես ի նոսա, եւ տաց զամենայն
28 հակառակորդս քո փախստականս։ Եւ
առաքեցից առաջի քո զպիծակ, եւ մեր-
ժեսցէ [2]զԱմորհացին եւ" զԽեւացին եւ
զՔանանացին եւ զՔետացին յերեսաց
29 քոց։ Եւ ոչ մերժեցից զնոսա յերեսաց
քոց ի միում ամի, զի մի՛ երկիրն անա-
պատ լինիցի, եւ բազմանայցեն ի վերայ
30 քո գազանք երկրին։ Առ սակաւ սա-
կաւ մերժեցից զնոսա ի քէն, մինչեւ
31 աճեսցես եւ ժառանգեսցես զերկիր։ Եւ
եդից զսահմանս քո ի Կարմիր ծովէ մին-
չեւ ի ծովն Փղշտացւոց, եւ յանապա-
տէն մինչեւ ի գետն մեծ Եփրատ. եւ
մատնեցից ի ձեռս ձեր զբնակիչս երկրին,
32 եւ մերժեցից զնոսա ի քէն։ Եւ դու մի՛
դնիցես ընդ նոսա եւ ընդ դիս նոցա
33 ուխտ։ Եւ մի՛ բնակեսցեն յերկրի քում,
գի մի՛ յանցուցանիցեն զքեզ առ իս. զի
եթէ ծառայեսցես դից նոցա, նոքա լի-
ցին քեզ ի գայթագղութիւն։

ԳԼ. ԻԴ

1 Եւ ասէ ցՄովսէս, Ել առ Տէր, դու եւ
Ահարոն եւ Նադաբ եւ Աբիուդ եւ եւ-
թանասուն այր ի ծերոցն Իսրայելի, եւ
[9]երկիր պագցեն Տեառն" ի հեռաստանէ։
2 Եւ մերձեսցի Մովսէս միայն առ [10]Աստ-
ուած, եւ նոքա մի՛ մերձեսցին. բայց
ժողովուրդն մի՛ ելցէ ընդ նոսա։
3 Եւ եմուտ Մովսէս եւ պատմեաց ժո-
ղովրդեանն զամենայն պատգամս [11]Աս-
տուծոյ եւ զամենայն իրաւունս. պա-
տասխանի ետ ամենայն ժողովուրդն ի
մի ձայն եւ ասեն, Զամենայն պատգամս
զոր խօսեցաւ Տէր՝ արասցուք [2]եւ լուի-
4 ցուք"։ Եւ գրեաց Մովսէս զամենայն
զպատգամսն Տեառն, եւ կանխեալ Մով-
սիսի ընդ առաւօտն, շինեաց սեղան ի
ստորոտ լերինն, եւ երկոտասան վէմ կանգ-
նեաց ըստ երկոտասան ազգացն Իսրայելի։
5 Եւ առաքեաց զերիտասարդս որդւոցն
Իսրայելի, եւ հանին ողջակէզս, եւ զոհե-
ցին զոհս [12]փրկութեան Աստուծոյ" որթս։
6 Եւ առեալ Մովսիսի զկէս արեանն արկ
ի խառնելիսն, եւ զկէս արեանն եհեղ

[1]Եբր. հնձոց [2]Յեբր. պակասէ [3]Եբր. ժողովելոյ յելս [4]Եբր. Եհովայի [5]Եբր. իմոյ [6]Եբր. զուլ [7]Եբր. թողուցու զյանցանս ձեր [8]Եբր. օրհնեսցէ

[9]Եբր. երկիր պագանիցէք [10]Եբր. Տէր [11]Եբր. Տեառն [12]Եբր. խաղաղութեան Տեառն

7 [1]առաջի սեղանոյն ։ Եւ առեալ զգիր ուխ-
տին ընթերցաւ յականջս ժողովրդեանն ․
եւ ասեն, Զամենայն զոր խօսեցաւ Տէր՝
8 արասցուք եւ լուիցուք։ Եւ առեալ Մով-
սէսի զարիւնն՝ ցանեաց զժողովրդեամբն
եւ ասէ, Ահա այս արիւն է ուխտին զոր
ուխտեաց Տէր ընդ ձեզ վասն ամենայն
բանիցս այսոցիկ ։
9 Եւ ել ին Մովսէս եւ Ահարոն եւ Նաբադ
եւ Աբիուդ եւ եւթանասունք ի ծերոցն
10 Իսրայելի, Եւ տեսին [2]զտեղին ուր կայր
Աստուած՝՝ Իսրայելի․ եւ ընդ ոտիւքն նորա
իբրեւ զգործ աղիւսոյ շափիղայ, եւ
իբրեւ [3]զտեսիլ հաստատութեան երկնից
11 սրբութեամբ։Եւ յընտրելոցն Իսրայելի ոչ
ծախեցաւ եւ ոչ մի․ եւ երեւեցան ի
տեղւոջն Աստուծոյ՝՝, եւ կերան եւ արբին։
12 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ել առ իս ի
լեառնն, եւ անդ լինիջիր, եւ տաց քեզ
տախտակս քարեղէնս եւ օրէնս եւ պատ-
ուիրանս զորս գրեցի, [4]լինել նոցա օրէնս-
13 դիր՝՝։Յարեաւ Մովսէս եւ Յեսու պաշտօն-
եայ նորա, եւ [5]ելին ի լեառնն Աստուծոյ․
14 Եւ ասէ ցծերսն, Դադարեցէք այդր մինչեւ
դարձցուք առ ձեզ․ եւ ահա Ահարոն եւ
Ովր ընդ ձեզ են․ եւ եթէ ուրուք դա-
տաստան ինչ լինիցի, երթիցեն առ նոսա։
15 Եւ ել Մովսէս ի լեառն, եւ ծածկեաց
16 ամպն զլեառնն ։ Եւ իջին փառքն Աս-
տուծոյ ի լեառնն Սինա, եւ ծածկեաց
զնա ամպն զվեց օր․ եւ կոչեաց Տէր
զՄովսէս յաւուրն եւթներորդի ի միջոյ
17 ամպոյն։ Եւ տեսիլ փառացն Տեառն իբրեւ
զհուր բորբոքեալ ի վերայ գլխոյ լերինն՝
18 յանդիման որդւոցն Իսրայելի ։ Եւ եմուտ
Մովսէս ի մէջ ամպոյն, եւ ել ի լեառնն,
եւ էր Մովսէս ի լերինն անդ զքառա-
սուն տիւ եւ զքառասուն գիշեր ։

Գ Լ․ ԻԵ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ա-
2 սէ, Ասասցես ցորդիսն Իսրայելի․ եւ ա-
ռէք ինձ [6]պտուղ ի նոցանէ, որոց հաճոյ
թուեսցի ի սիրտս իւրեանց եւ առնու-
3 ցուք [6]զպտուղս իմ ։ Եւ այս է [6]պտուղն
զոր առնուցուք ի նոցանէ․ ոսկի եւ ար-
4 ծաթ եւ պղինձ, Եւ կապուտակ եւ ծի-
րանի, եւ կարմիր կրկին, եւ բեհեզ մա-
5 նեալ, եւ մազ այծեաց, Եւ մորթս խոյոց
կարմիր ներկեալ, եւ մորթս [7]կապուտա-
6 կեայս, եւ փայտ [8]անփուտս, Եւ եւղ
լուսոյ եւ խունկս՝ յեւղ օծման եւ ի
7 հանդերձանս խնկոց, Եւ ակունս սար-
դիոնս, եւ ականս գրոց ի գործ [9]վակա-
ղին, եւ [10]զպճղնաւորն ։
8 Եւ [11]արասցես ինձ սրբութիւն, եւ [12]ե-
9 րեւեցայց ի ձեզ ։ Եւ արասցես ինձ
ըստ՝՝ ամենայնի զոր ցուցից քեզ [13]ի լերինն՝
օրինակ խորանի եւ օրինակ ամենայն
սպասուց նորա, եւ այսպէս [14]արասցես։
10 Արասցես տապանակ վկայութեան յան-
փուտ փայտից․ յերկուց կանգնոց եւ ի
կիսոյ զերկայնութիւն նորա, եւ ի կանգ-
նոյ եւ ի կիսոյ զլայնութիւն նորա, եւ ի
կանգնոյ եւ ի կիսոյ զբարձրութիւն նո-
11 րա ։ Եւ պատեսցես զնա ոսկւով սրբով,
ներքոյ եւ արտաքոյ [15]օծցես զնա․ եւ ա-
րասցես նմա ծնօտս ոսկիս շուրջ զրջա-
12 նակաւ ։ Եւ ձուլեսցես նմա չորս օղա-
մանեակս ոսկիս, եւ դիցես ի չորեցունց
կողմանց նորա, երկուս օղամանեակս ի
միոջէ կողմանէ, եւ երկուս օղամանեակս
13 ի միւսմէ կողմանէ ։ Եւ արասցես լծակս
յանփուտ փայտից, եւ պատեսցես զնոսա
14 ոսկւով ։ Եւ ագուցես զլծակսն յօղա-
մանեակսն ի կողմանս տապանակին, բառ-
15 նալ նովօք զտապանակն․ Զի յօղամա-
նեակս տապանակի կատարանացն կայ-
ցեն լծակքն․ անշարժք անդստին ի նմա-
16 նէ ։ Եւ դիցես ի տապանակին զվկայու-
թիւնսն զոր ես տաց քեզ ։
17 Եւ արասցես զքաւութիւնն [13]խնկակալ
յոսկւոյ սրբոյ, յերկուց կանգնոց եւ ի
կիսոյ զերկայնութիւն նորա, եւ ի կանգ-
18 նոյ եւ ի կիսոյ զլայնութիւն նորա ։ Եւ
արասցես երկուս քերովբէս ոսկիս [16]ճա-
խարակեալս, եւ դիցես զնոսա ի վերայ
19 երկոցունց կողմանց քաւութեանն․ Եւ
լինիցին քերովբէքն՝ մի ի միոջէ կողմանէ,
եւ մի ի միւսմէ կողմանէ քաւութեանն․
եւ արասցես երկուս քերովբէս ի վերայ
20 երկոցունց կողմանց նորա ։ Եւ իցէ քերո-
բէիցն տարածեալ զթեւս իւրեանց ի վե-

[1] Եբր. ի վերայ [2] Եբր. զԱստուած [3] Եբր. զբուն երկինս ըստ յստակութեան։ (11) Եւ յընտրեալսն որդւոցն Իսրայելի ոչ ձգեաց զձեռն իւր․ և տեսին զԱստուած [4] Եբր. ուսուցանել նոցա [5] Եբր. ել Մովսէս [6] Եբր. նուէր, կամ, ընծայ

[7] Եբր. թեհաշի, որպէս էին եւ այլուր [8] Եբր. սատիմ, որպէս ընթերցեր լատինացւոց փայտ [9] Այ-ծեան, եփուտին [10] Եբր. տախտակին (կրծա-նոցին) [11] Եբր. արասցեն [12] Եբր. բնակեցայց ի միջի նոցա։ (9) Ըստ [13] Յ Եբր. ողորմ [14] Եբր. արասջիք [15] Եբր. պատեսցես [16] Կամ, կռածոյս

րուստ, եւ հովանի ունիցին թեւօք իւր-
եանց ի վերայ քաւութեանն. եւ երեսք
նոցա յանդիման միմեանց, զի ի քաւու-
21 թիւնն հայեսցին երեսք քերովբէիցն: Եւ
դիցես զքաւութիւնն ի վերայ տապանա-
կին ի վերուստ կողմանէ. եւ դիցես ի
տապանակի անդ զվկայութիւնն զոր ես
22 տաց քեզ: Եւ յայտնեցայց քեզ անտի,
եւ խօսեցայց ընդ քեզ ի վերուստ ի քա-
ւութենէ անտի, ի միջոյ երկուց քերո-
բէիցն՝ որ իցեն ի վերայ տապանակին
վկայութեան, ըստ ամենայնի զոր պա-
տուիրեցից քեզ առ որդիսն Իսրայելի:
23 Եւ արասցես սեղան յանփուտ փայ-
տից. յերկուց կանգնոց զերկայնութիւն
նորա, եւ ի կանգնոյ զլայնութիւն նորա,
եւ ի կանգնոյ եւ ի կիսոյ զբարձրութիւն
24 նորա: Եւ պատեսցես զնա ոսկւով սրբով,
եւ արասցես նմա ծնօտս ոսկիս չրջա-
25 նակաւ չուրջանակի: Եւ արասցես նմա
պսակ ուղկեան չուրջանակի. եւ արա-
ցես պսակին [1]ծնօտս չրջանակաւ չուր-
26 ջանակի: Եւ արասցես նմա չորս օ-
ղամանեակս ոսկիս, եւ դիցես զօղամա-
նեակսն ի չորեսին կողմանսն, որ իցեն
չորեցունց ոտից նորա, ի ներքոյ պսա-
27 կին: Եւ եղիցին օղամանեակքն լամբք
28 լծակացն՝ բառնալ նոքօք զսեղանն: Եւ
արասցես զլծակսն յանփուտ փայտից,
եւ պատեսցես զնոսա ոսկւով [2]սրբով.
29 եւ բարձցի նոքօք սեղանն: Եւ արա-
ցես [3]զխնկաղաման եւ զտուփս նորա,
եւ զճաշակս եւ զնուիրանոցս նորա ո-
րովք նուիրեսցես, յոսկւոյ սրբոյ ա-
30 րասցես [4]զայն: Եւ դիցես ի վերայ [5]սե-
ղանոյ հացյն երեսաց հայ" յանդիման
իմ հանապազորդ:
31 Եւ արասցես աշտանակ յոսկւոյ սրբոյ.
[6]ճախարակեայ գործեսցես զաշտանակն.
բունն եւ ստեղունքն եւ սկահքն եւ
գնդակքն եւ շուշանքն անդստին ի նմա-
32 նէ իցեն: Վեց ստեղունք արձակեալք ի
կողմանց նորա. երեք ստեղունք աշտա-
նակին ի միոջէ կողմանէ, եւ երեք ստե-
ղունք աշտանակին ի միւսմէ կողմանէ:
33 Եւ երեք սկահաձեւք ընկուզազարդք
յօրինեալք ի միում ստեղանն, եւ գնդակ
եւ շուշան. եւ երեք սկահաձեւք ընկու-
զազարդք յօրինեալք ի միւսում ստե-
ղանն, եւ գնդակ եւ շուշան. Նոյնպէս
վեցեցունց ստեղանցն արձակելոց յաշ-
34 տանակէ անտի: Եւ յաշտանակի անդ չորք
սկահաձեւք ընկուզազարդք յարդարեալք,
35 եւ գնդակք եւ շուշանք նորա: Գնդակ
ի ներքոյ երկուց ստեղանցն անդստին ի
նմանէ, եւ գնդակ ի ներքոյ երկուց եւս
ստեղանցն անդստին ի նմանէ. Նոյնպէս
արասցես վեցեցունց ստեղանցն արձա-
36 կելոց յաշտանակէ անտի: Զի գնդակք
նոցա եւ ստեղունք անդստին ի նմանէ
իցեն, համակ [6]ճախարակեայ ի միոջէ
37 ոսկւոյ սրբոյ: Եւ արասցես նմա ճրա-
գարանս եւթն, եւ [7]դիցես զճրագարանսն
ի վերայ աշտանակին, եւ տայցեն լոյս
38 ի միոջէ" կողմանէ երեսաց նորա: Եւ
[8]զբազմակալս նորա եւ զնեցուկսն" ա-
րասցես յոսկւոյ սրբոյ. ի տաղանդէ միոյ
յոսկւոյ սրբոյ արասցես զայն ամենայն
39 սպաս: Զգոյշ լեր, որպէս ցուցաւ քեզ
օրինակ ի լերինն՝ արասցես:

## ԳԼ. ԻԶ

1 Եւ արասցես խորան տասնփեղկեան,
ի բեհեզոյ մանելոյ եւ ի կապուտակէ եւ
ի ծիրանւոյ եւ ի կարմրոյ կրկնելոյ. [9]քե-
րոբ՝ գործ անկուածոյ" գործեսցես զնոսա:
2 Երկայնութիւն միոյ փեղկին ի քսան եւ
յութ կանգնոյ, եւ լայնութիւն ի չորից
կանգնոց փեղկի միոյ լինիցի. չափ նոյն
3 եղիցի ամենայն փեղկիցն: Հինգ փեղկ
ընդ միմեանս կցեալ, եւ հինգ եւս այլ
4 ընդ միմեանս խառնեալ: Եւ արասցես
ճարմանդս կապուտակեայս առ եզերբ
միոյ փեղկին ի միոջէ կողմանէ ի խառ-
նուածս. Նոյնպէս արասցես եւ առ եզերբ
արտաքնոյ փեղկին, երկրորդի խառ-
5 նուածոյն: Յիսուն ճարմանդ արասցես
միում փեղկի, եւ յիսուն ճարմանդ ա-
րասցես ի կողմանէ փեղկին ըստ երկրորդի
խառնուածոյն. դէմ ընդ դէմ միմեանց
իւրաքանչիւր խառնիցին ճարմանդքն:
6 Եւ արասցես յիսուն օղս ոսկիս, եւ խառ-
նեսցես զփեղկսն ընդ միմեանս աղխիւքն.
եւ եղիցի խորան մի:
7 Եւ արասցես վրանափեղկս մազեղէնս
նուարտան խորանին, մետասան փեղկ
8 գործեսցես զնոսա: Երկայնութիւն միոյ

[1] Եբր. ծնօտս ոսկիս [2] Յեբր. պ–ւ–ւէ [3] Եբր. զսկուտեղսն [4] Եբր. զնոսա [5] Եբր. սեղանոյն հաց երեսաց [6] Կամ, կռածոյ

[7] Եբր. բարձցէ զճրագարանս իւր, և տայցէ լոյս ի [8] Եբր. զունելիս նորա և զբազմակալս նորա [9] Եբր. քերոբէիւք՝ գործ ճարտարի

վեցկի՝ լինիցի յերեսուն կանգնոյ. եւ
լայնութիւն միոյ փեղկի ի չորից կանգնոց.
չափ նոյն եղիցի մետասանեցունց փեղ-
9 կիցն։ Եւ խառնեսցես ընդ միմեանս զհինգ
փեղկսն ի միասին, եւ զվեց փեղկսն ի միա-
սին. եւ կրկնեսցես զվեցերորդ փեղկն
10 առաջոյ կողմանէ խորանին։ Եւ արաս-
ցես ճարմանդս յիսուն առ եզերբ միոյ
փեղկին ի մէջ խառնուածոյն. եւ յիսուն
ճարմանդ արասցես առ եզերբ փեղկին
11 երկրորդի խառնուածոյն։ Եւ արասցես
օղս պղնձիս յիսուն, եւ խառնեսցես զօղսն
ընդ ճարմանդսն, եւ կցեսցես զփեղկսն,
12 եւ եղիցին մի։ Եւ [1]դիցես զաւելորդ փեղ-
կիցն ի ներքոյ խորանին. կիսով փեղկիւն
աւելորդաւ մնացելով ծածկեսցես զա-
պարումս փեղկից խորանին յետոյ կող-
13 մանէ", կանգնաւ՝ յայսմ կողմանէ, եւ
կանգնաւ՝ յայնմ կողմանէ, յաւելորդէ
երկայնութեան փեղկից խորանին եղիցի
ծածկել զապարումս խորանին աստի ան-
14 տի։ Եւ արասցես [2]զվիժակս խորանին
ի չիկակարմիր մորթոյ խոյոց, եւ [3]ծած-
կելիս՝ ի կապուտակ" մորթոյ ի վերուստ։
15 Եւ արասցես [4]զսիւնակս խորանին յան-
16 փուտ փայտից կանգնաւորս։ Ի տասն
կանգնոյ զերկայնութիւն միոյ [5]սիւնակին
առնիցես, եւ ի միջէ կանգնոյ եւ ի կիսոյ
[6]զթանձրութիւն եւ" զլայնութիւն միոյ
17 [5]սիւնակին։ Եւ երկուս [7]սափիչս միում
[5]սիւնակի՝ [8]ագուցեալ ընդ միմեանս".
այնպէս արասցես ամենայն [9]սիւնակաց
18 խորանին։ Եւ [10]արասցես քսան սիւնակս
19 խորանին ի հիւսիսոյ կողմանէ"։ Եւ քա-
ռասուն խարիսխս արծաթիս արասցես
[11]քսանեցունց սեանցն". երկու խարիսխք
[12]առ մի սիւն յերկոցունց կողմանց", եւ
երկու խարիսխք [12]առ մի սիւն յերկոցունց
20 կողմանց խորանին"։ Եւ յերկրորդէ կող-
մանէ խորանին ընդ [13]հարաւ քսան սիւն",
21 Եւ քառասուն խարիսխք նոցա արծա-
թիք. երկու խարիսխք [14]առ մի սիւն
22 յերկոցունց կողմանց"։ Եւ յետուստ խո-
րանին [15]ի ծովակողմն կուսէ" արասցես
23 վեց [16]սիւն։ Եւ երկուս [17]սիւնս արաս-
ցես յանկիւնս խորանին ի թիկանց կող-
24 մանէ։ Եւ եղիցին [18]հաւասարակ ի ներ-
քուստ, եւ ըստ նմին օրինակի լինիցին
[19]զոյգք խոյակաց նոցա ի մի խառնուած.
նոյնպէս արասցես երկոցունց անկեանցն
25 կանգնաւորս". Եւ եղիցին ութ [20]սիւն.
եւ խարիսխք նոցա արծաթիք՝ վեշտա-
սան խարիսխք. երկու խարիսխք [14]առ
մի սիւն յերկոցունց կողմանց նորա, եւ
26 երկու խարիսխք առ միւս եւս սիւն"։ Եւ
արասցես նիգս յանփուտ փայտից. հինգ
նիգ առ [21]մի սիւն" ի միջէ կողմանէ խո-
27 րանին, Եւ հինգ նիգ առ [21]միւս եւս սիւն"
յերկրորդ կողմանէ խորանին. եւ հինգ նիգ
առ [21]մի սիւն" ի թիկանց խորանին ընդ
28 ծովակողմն. Եւ նիգ մի ի մէջ [22]սեանցն՝
29 թափանցանց ի միջէ ի միւս կողմն։ Եւ
[23]զսիւնսն պատեսցես ոսկւով. եւ ա-
րասցես օղս ոսկիս՝ յորս ագուցանիցես
զնիգսն. եւ պատեսցես զնիգսն ոսկւով։
30 Եւ կանգնեսցես զխորանն ըստ օրինա-
կին որ ցուցաւ քեզ ի լերին անդ։
31 Եւ արասցես վարագոյր ի կապուտակէ
եւ ի ծիրանւոյ եւ ի կարմրոյ մանելոյ եւ
ի բեհեզոյ նիւթելոյ. գործ [24]անկուածոյ
32 գործեսցես զնա քերուբ"։ Եւ դիցես զնա
ի վերայ չորեցունց անփուտ եւ ոսկե-
պատ սեանցն. եւ [25]խոյակք նոցա ոս-
33 կիք, եւ խարիսխք նոցա արծաթիք։ Եւ
ձգեսցես զվարագոյրն [26]սիւնէ ի սիւն",
եւ տարցիս ի ներքս քան զվարագոյրն
զտապանակ վկայութեանն. եւ անջրպե-
տիցէ ձեզ վարագոյրն ի մէջ սրբութեանն,
34 եւ ի մէջ սրբութեան սրբութեանցն։ Եւ
[27]ծածկեսցես վարագուրաւն զտապա-
նակ" վկայութեանն ի սրբութիւն սրբու-
35 թեանցն։ Եւ դիցես զսեղանն արտաքոյ
վարագուրին, եւ զաշտանակն յանդիման

[1] Եբր. աւելորդն փեղկից վրանին, կէս փեղկին՝ աւելորդն, յետոյ կողմանէ խորանին կայցէ կախեալ [2] Եբր. վիժակ (ծածկոյթ) [3] Եբր. վիժակ ի թեհաշի [4] Եբր. զտախտակս [5] Եբր. տախտակին [6] Յ Եբր. [illegible] [7] Եբր. ձեռս, [illegible] ագոյցս [8] Եբր. համեմատս միմեանց [9] Եբր. տախտակաց [10] Եբր. արասցես զտախտակս խորանին. քսան տախտակս ի հարաւոյ՝ ի հարաւ կոյս [11] Եբր. ընդ քսանեքումբք տախտակօքն [12] Եբր. ընդ միով տախտակաւ վասն երկուց ագուցից [13] Եբր. հիւսիսի քսան տախտակք

[14] Եբր. ընդ միով տախտակաւ, և երկու խարիսխք ընդ միով տախտակաւ [15] [illegible], յարեւմտից [16] Եբր. տախտակ [17] Եբր. տախտակս [18] Եբր. կրկին, կամ, կցեալք [19] Եբր. կցեալ ի վերուստ ի մի ճարմանդ. նոյնպէս եղիցի երկոցունց նոցա. յերկսին անկիւնսն եղիցին [20] Եբր. տախտակք [21] Եբր. տախտակն [22] Եբր. տախտակացն [23] Եբր. զտախտակսն [24] Եբր. գործ ճարտարի գործեսցի քերոբէիւք [25] Կամ, ճարմանդք [26] Եբր. ի ներքոյ ճարմանդիցն [27] Եբր. դիցես զքաւութիւնն ի վերայ տապանակի

սեղանոյն՝ ի կողմանէ խորանին ընդ հարաւ. եւ զսեղանն դիցես ի կողմանէ [1]խորանին ընդ հիւսիսի ։
36 Եւ արասցես սրահակ դրան խորանին ի կապուտակէ եւ ի ծիրանւոյ եւ ի կարմրոյ մանելոյ եւ ի բեհեզոյ նիւթելոյ, գործ
37 նկարակերպ ։ Եւ արասցես վարագուրին հինգ սիւնս յանփուտ փայտից, եւ [2]օծցես զնոսա ոսկւով, եւ [3]խոյակք նոցա ոսկիք. եւ ձուլեսցես նոցա հինգ խարիսխս պղնձի ։

## ԳԼ. ԻԷ

1 Եւ արասցես սեղան յանփուտ փայտից, ի հինգ կանգնոյ զերկայնութիւն եւ ի հինգ կանգնոյ զլայնութիւն. չորեքկուսի լինիցի սեղանն. եւ յերից կանգնոց
2 զբարձրութիւն նորա ։ Եւ արասցես զեղջերս նորա ի վերայ չորեցունց անկեանց իւրոց, զի անգատին [4]ընտրեալ լիցին եղ-
3 ջեւրքն. եւ պատեսցես զնա պղնձով ։ Եւ արասցես [5]պսակ սեղանոյն, եւ զնուարտանն" նորա, եւ զպաշտան եւ զմսահանսն եւ զկրակարանսն, եւ զամենայն
4 սպասն արասցես պղնձի ։ Եւ արասցես նմա զահաւորակ վանդակակերպ պղնձի. եւ արասցես զահաւորակին չորս օղամանեակս պղնձիս ի չորեցունց կողմանէ.
5 Եւ դիցես [6]զնոսա ընդ դահաւորակաւ" սեղանոյն ի ներքոյ. եւ եղիցի գահաւո-
6 րակն մինչեւ ի մէջ սեղանոյն ։ Եւ արասցես լծակս սեղանոյն՝ լծակս յանփուտ փայտից. եւ պատեսցես զնոսա պղնձով.
7 Եւ արկցես զլծակսն ընդ օղսն, եւ եղիցին լծակքն յերկոցունց կողմանց սեղա-
8 նոյն՝ առ ի բառնալ զնա ։ Խոր տախտակամածս արասցես զնա. ըստ օրինակին որպէս ցուցաւ քեզ ի լերին անդ, այնպէս արասցես զնա ։
9 Եւ արասցես [7]սրահ խորանին. ի կողմ հարաւոյ զառագաստ [8]սրահին ի բեհեզոյ մանելոյ, հարեւր կանգուն յերկայնու-
10 թիւն միոյ կողմանն, Եւ սիւնք նորա քսան, եւ խարիսխք նոցա պղնձիք քսան, եւ օղք նոցա եւ [9]խոյակք նոցա արծա-
11 թիք ։ Նոյնպէս եւ ի կողմանն որ ընդ հիւսիսի՝ առագաստքն հարեւր կանգուն յերկայնութիւն. եւ սիւնք նոցա պղնձիք քսան, եւ խարիսխք նոցա պղնձիք քսան, եւ [10]խոյօղք նոցա եւ խարիսխք սեանցն,
12 եւ խարիսխք պատեալ արծաթով" ։ Եւ ի լայնութիւն [8]սրահին ընդ ծովակողմն՝ առագաստք ի յիսուն կանգնոյ, սիւնք նոցա տասն եւ խարիսխք նոցա տասն ։
13 Եւ լայնութիւն [11]առաջին սրահին" որ ընդ արեւելս՝ [1]առագաստք ի յիսուն կանգնոյ, [1]սիւնք նոցա տասն եւ խարիսխք նոցա
14 տասն" Եւ ի հնգետասան կանգնոյ բարձրութիւն առագաստիցն ի միոջէ կողմանէ. սիւնք նոցա երեք եւ խարիսխք նոցա
15 երեք ։ Եւ յերկրորդում կողմանն՝ հնգետասան կանգուն առագաստիցն ի բարձրութիւն. սիւնք նոցա երեք եւ խարիսխք
16 նոցա երեք ։ Եւ դրան [8]սրահին վարագոյր՝ քսան կանգուն ի բարձրութիւն, ի կապուտակէ եւ ի ծիրանւոյ եւ ի կարմրոյ մանելոյ եւ ի բեհեզոյ նիւթելոյ, նկարէն յաղնագործաց. եւ սիւնք նոցա չորք
17 եւ խարիսխք նոցա չորք։ Ամենայն սիւնք [8]սրահին շուրջանակի՝ [12]արծաթապատք, եւ խոյակք" նոցա արծաթիք, եւ խա-
18 րիսխք նոցա պղնձիք ։ Եւ երկայնութիւն [13]սրահին հարեւր առ հարեւր", եւ լայնութիւն յիսուն առ յիսուն, եւ բարձրութիւն [14]հնգետասան կանգուն, ի բեհեզոյ մանելոյ. եւ խարիսխք նոցա պղնձիք ։
19 Եւ ամենայն կահ խորանին [15]եւ ամենայն գործի նորա" եւ ամենայն ցիցք [8]սրահին՝ պղնձիք ։
20 Եւ դու պատուիրեա որդւոցն Իսրայէլի, եւ առցեն քեզ ձէթ ի ձիթենեաց պարզ, [16]սուրբ, խակակուռ," ի լոյս. զի
21 եղիցի ճրագ հանապազորդ ։ Ի խորանին վկայութեան՝ արտաքոյ վարագուրին ուխտին, լուցանիցէ զնա Ահարոն եւ որդիք իւր յերեկորեայ մինչեւ ցառաւօտ առաջի Տեառն. օրէն յաւիտենական յազգս ձեր առ ի յորդւոցն Իսրայէլի ։

## ԳԼ. ԻԸ

1 Եւ դու մատուսցես առ քեզ զԱհարոն զեղբայր քո, եւ զորդիս նորա ընդ նմա՝ յորդւոցն Իսրայէլի, քահանայանալ ինձ. զԱհարոն եւ զՆադաբ եւ զԱբիուդ եւ զԵղիազար եւ զԻթամար զորդիս Ահա-

[1] Եբր. [illegible] [2] Եբր. պատեսցես [3] Եբր. ճարմանդք [4] Եբր. ի նմանէ [5] Եբր. զանօթս մոխրոյ նորա և զբահս [6] Եբր. զնա ընդ ծնօտիւ [7] Եբր. գաւիթ [8] Եբր. գաւթին [9] Եբր. գօտիք

[10] Եբր. օղք սեանցն և գօտիք նոցա արծաթիք [11] Եբր. գաւթին առաջակողման [12] Եբր. գօտեօք արծաթեօք, եւ օղք [13] Եբր. գաւթին հարեւր կանգուն [14] Եբր. հինգ [15] Եբր. առ ամենայն սպաս նորա, և ամենայն ցիցք նորա [16] Եբր. ծեծեալ

2 ռոնի ։ Եւ արասցես [1]պատմուճան սուրբ
Ահարոնի եղբօր քում ի պատիւ եւ ի փառս։
3 Եւ դու խօսեսցիս ընդ ամենայն իմաս-
տունս մտօք, զորս լցուցից հոգւով ի-
մաստութեան, եւ արասցեն պատմուճան
[2]սուրբ Ահարոնի ի սրբութիւն, որովք քա-
4 հանայանայցէ ինձ։ Եւ այս [3]օրինակ պատ-
մուճանացն՝ զոր առնիցեն. [4]զպճղնաւորն
եւ զվակաս զուտակք եւ զպանդօք, եւ
զպատմուճանն բեհեզեայ՝ եւ խոյր եւ
կամար. եւ արասցեն պատմուճան սուրբ
Ահարոնի եղբօր քում եւ որդւոց նորա՝
քահանայանալ ինձ։
5 Եւ առցեն նոքա ոսկի եւ կապուտակ
եւ ծիրանի եւ կարմիր մանեալ եւ բեհեզ։
6 Եւ արասցեն զվակասն յոսկւոյ [2]սրբոյ եւ
ի կապուտակէ եւ ի ծիրանւոյ եւ ի կարմ-
րոյ մանելոյ եւ ի բեհեզոյ նիւթելոյ, գործ
7 [5]ոստայնի նկարակերպ՝։ Երկու [6]վակասք
ընդ միմեանս խառնեալք, եւ եղիցին ի
վերայ երկոցունց կողմանց նորա հաս-
8 տատեալք։ Եւ [7]գործ վակասին որ իցէ ի
վերայ նորա, ըստ նմին օրինակի գործ
անզատելի ի նմանէ լինիցի, յոսկւոյ [2]սրբոյ
եւ ի կապուտակէ եւ ի ծիրանւոյ եւ ի
կարմրոյ մանելոյ եւ ի բեհեզոյ նիւթելոյ։
9 Եւ առցես երկուս ականս զմրուխտս,
եւ գրեսցես ի նոսա զանուանս որդւոցն
10 Իսրայելի։ Զվեց անուն նոցա ի միում
ական, եւ զայլն եւս վեց՝ յերկրորդում
11 ականն, ըստ [8]ազգս լինելոց. Գործ
ճարտարութեան ականագործաց, քանդակ
կնքոյ քանդակեսցես զերկոսին ականսն՝
ըստ անուանց որդւոցն Իսրայելի. [9]պա-
տուելալս եւ քանդակեալս ոսկւով՝ արա-
12 ցես զնոսա։ Եւ դիցես զերկուս ականսն
ի վերայ ուսոց վակասին, զի լինիցին ա-
կանքն յիշատակ որդւոցն Իսրայելի. եւ
բարձցէ Ահարոն զանուանս որդւոցն
Իսրայելի առաջի Տեառն ի վերայ երկուց
13 ուսոց իւրոց ի յիշատակ վասն նոցա։ Եւ
14 արասցես [10]փականս յոսկւոյ [2]սրբոյ ։ Եւ
արասցես երկուս վերջս յոսկւոյ սրբոյ,
մանուածոյս ծաղկեալս՝ գործ հիւսկէն,
եւ դիցես զվերջսն մանուածոյս ի վերայ
[11]երկոցուն փականակացն առ վտաւա-
կօքն նոցա առաջոյ կողմանէ՝։
15 Եւ արասցես զտախտակն դատաստա-
նաց գործ [12]նկարակերպ. ըստ ձեւոյ՝
վակասին արասցես զնա, յոսկւոյ եւ ի
կապուտակէ եւ ի ծիրանւոյ եւ ի կարմրոյ
16 մանելոյ եւ ի բեհեզոյ [13]նիւթելոյ ։ Եւ ա-
րասցես զնա չորեքանկիւնի՝, թզաւ յեր-
17 կայնութիւն եւ թզաւ ի լայնութիւն ։ Եւ
ընդելուզցես ի նմա ընդելուզածս, ըստ
չորեքկարգեան ականց. կարգ ականցն,
առաջին՝ զմրուխտ եւ սարդիոն եւ տպա-
18 զիոն, կարգ մի. Եւ կարգն երկրորդ՝
19 կարկեհան եւ շափիւղա եւ յասպիս. Եւ
կարգն երրորդ՝ գոճազմ եւ ակատ եւ ամե-
20 թուստ. Եւ կարգն չորրորդ՝ յակինթ եւ
բիւրեղ եւ եղունգն, [14]ընդելուզեալ, յու-
կի կապեալ՝ յիւրաքանչիւր կարգս կայ-
21 ցեն՝։ Եւ եղիցին ականքն յանուանց որդ-
ւոցն Իսրայելի երկոտասան, ըստ ա-
նուանց նոցա գրեալք քանդակաւ՝ իւրա-
քանչիւր ըստ անուան իւրում լիցին, ըստ
22 ազգացն երկոտասանից ։ Եւ արասցես
[15]տախտակ մի հիւսկէն վերջիւք, գործ
23 շղթայագործ՝ յոսկւոյ սրբոյ. Եւ արաս-
ցես ի վերայ տախտակին երկուս օղս
ոսկիս, եւ դիցես զերկուս օղսն ոսկիս ի
24 վերայ երկուց ծայրից տախտակին ։ Եւ
դիցես զերկուս [16]շղթայագործսն ոսկիս
ի վերայ երկոցուն օղոցն առ ծայրիւք
25 տախտակին. Եւ զերկուս ծայրս երկուց
[17]շղթայագործիցն տացես ի վերայ երկո-
ցունց [18]մած. եւ դիցես ի վերայ թիկանց
26 վակասին ի ճակատ երեսաց նորա ։ Եւ
արասցես երկուս օղս ոսկիս, եւ տացես
զնոսա ի վերայ երկուց ծայրից տախտա-
կին, առ եզերբն՝ որ իցէ հանդէպ վա-
27 կասին ի ներքոյ կողմանէ ։ Եւ արասցես
երկուս օղս ոսկիս, եւ տացես զնոսա ի
վերայ երկուց ուսոց վակասին ի ներքոյ
կողմանէ՝ յանդիման [19]միմեանց միարան.
եւ զաղխս նորա ի վերայ մենքենայից՝
28 վակասին ։ Եւ պնդ ունիցին զտախտակն
յօղոց նորա մինչեւ ցօղս վակասին, ի
նիւթոյ կապուտակէ. զի իցէ ի վերայ

[1]Պատմուճան, ... ... ... , ... ... ազանելիս ... զգեստ ... ... [2]Յեբր. ...
[3]Եբր. են ազանելիքն [4]Եբր. տախ-
տակ (կրծանոց) և վակաս (եփուտ), և պարե-
գօտ եւ շապիկ նկարէն [5]Եբր. ճարտարի
[6]Եբր. վտաւակք (ուսանոց) [7]Եբր. ժապաւէն
[8]Եբր ծննդս [9]Եբր. ընդելուզեալս ի խորշս
ոսկիս [10]Եբր. խորշս

[11]Եբր. խորշիցն [12]Եբր. ճարտարի. ըստ գոր-
ծոյ [13]Եբր. նիւթելոյ արասցես զնա ։ (16)
Զորեքանկիւնի եղիցի կրկնեալ [14]Եբր. ընդե-
լուզեալք ի խորշս ոսկիս [15]Եբր. տախտակին
շղթայս ոլորեալս, գործ հիւսկէն [16]Եբր.
հիւսուածսն [17]Եբր. հիւսուածոցն [18]Եբր.
խորշիցն [19]Եբր. խառնուածոյ նորա ի վե-
րուստ ժապաւէնի

[1]մենւքենայից վակասին, եւ մի՛ զերծա-
29 նիցի տախտակն ի վակասէ անտի ։ Եւ
առցէ Ահարոն զանուն որդւոցն Իսրայելի
ի վերայ տախտակի դատաստանին ի լանջս
իւր, ի մտանել իւրում ի սրբութիւնն ի
յիշատակ հանապազորդ առաջի [2]Աստու-
30 ծոյ ։ [3]Եւ դիցես ի վերայ տախտակի դա-
տաստանին զվերջին շղթայագործս, յեր-
կոցունց կողմանց տախտակին դիցես. եւ
զերկուս վահանակսն դիցես ի վերայ եր-
կուց ուսոց վակասին յերեսաց կողմանէ
ի ներքուստ ։" Եւ դիցես ի վերայ տախ-
տակի դատաստանին [4]զՅայտնութիւն
եւ զՃշմարտութիւն". եւ եղիցի ի վերայ
լանջացն Ահարոնի յորժամ մտանիցէ ի
[3]ի սրբութիւնն առաջի Տեառն. եւ տար-
ցի Ահարոն զդատաստանս որդւոցն Իս-
րայելի ի վերայ լանջաց իւրոց առաջի
Տեառն հանապազ ։
31 Եւ արասցես [5]վտաւակս պճղնաւորս"
32 համակ կապուտակ ։ Եւ [6]զօձիսն գրապա-
նաւ արարեալ, բոլորակ ձեւեսցես շուր-
ջանակի՝ գործ անկուածոյ, եւ զխառ-
նուածսն անկեալ անդստին ի նմանէ. զի
33 մի՛ պատառիցի" ։ Եւ արասցես [7]առ ստորո-
տով վտաւակացն ի ներքոյ կողմանէ՝ իբ-
րեւ նռնաձեւս ծաղկեալս", ի կապուտա-
կէ եւ ի ծիրանւոյ եւ ի կարմրոյ մանե-
լոյ [3]եւ ի բեհեզոյ նիւթելոյ", առ ստորո-
տով [8]վտաւակացն շուրջանակի, եւ նե-
սիլ նորա նռնաձեւ", եւ զանգակս ոսկիս
34 ի մէջ նոցա շուրջանակի ։ Զանգակ ոսկի
եւ [9]նռնաձեւ՝ ծաղկեալ առ ստորով վտա-
35 ւակացն" շուրջանակի ։ Եւ եղիցի ի վե-
րայ Ահարոնի, յորժամ պաշտիցէ, հնչիւն
բարբառոյ ի մտանել իւրում ի սրբու-
թիւնն առաջի Տեառն եւ յելանել նորա,
զի մի՛ մեռանիցի ։
36 Եւ արասցես թիթեղն յոսկւոյ սրբոյ,
եւ քանդակեսցես ի նմա քանդակ կնքոյ՝
37 ՍՐԲՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ ։ Եւ դիցես զնա ի վե-
38 րայ [10]կապուտակին մանելոյ" ։ Եւ եղիցի
[11]խուրին յերեսաց կողմանէ" ի վերայ
ճակատուն Ահարոնի, եւ բարձցէ Ահա-
րոն զմեղս նուիրացն, որչափ ինչ նուի-
րիցեն որդիքն Իսրայելի, ըստ ամենայն
տրոց սրբութեանցն իւրեանց. եւ եղիցի
ի վերայ ճակատուն Ահարոնի հանապազ
յընդունելութիւն նոցա առաջի Տեառն ։
39 Եւ [12]զպճղնաւոր պատմուճանն" ի բե-
հեզոյ, եւ արասցես [13]ապարօշ բեհեզե-
40 ղէն, եւ կամար՝ գործ նկարակերպ ։ Եւ
որդւոցն Ահարոնի արասցես [14]պատմու-
ճանս եւ կամարս եւ խոյրս", ի պատիւ
41 եւ ի փառս ։ Եւ զգեցուսցես զայն Ահա-
րոնի եղբօր քում, եւ որդւոց նորա ընդ
նմա, եւ օծցես զնոսա, եւ [15]լցցես զձեռս"
նոցա, եւ սրբեսցես զնոսա զի քահա-
42 նայասցեն ինձ ։ Եւ արասցես նոցա անդ-
րավարտիս կտաւիս, ծածկել զառականս
մարմնոյ իւրեանց, միջովք չափ եւ բար-
43 ձիւք չափ ։ Եւ ունիցի զայն Ահարոն
եւ որդիք նորա, յորժամ մտանիցեն ի
խորանն վկայութեան, կամ յորժամ մեր-
ձենայցեն ի սեղանն սրբութեան պաշ-
տել, եւ մի՛ ածիցեն ի վերայ իւրեանց
մեղս, զի մի՛ մեռանիցին. օրէն յաւիտե-
նական նմա եւ զաւակի իւրում յետ նորա ։

## ԳԼ. ԻԹ

1 **Ե**ւ այս ինչ է զոր առնիցես նոցա, [16]եւ
սրբեսցես" զնոսա քահանայանալ նոցա
ինձ. առցես զուարակ մի յանդոյ, եւ խոյս
2 երկուս անարատս, Եւ պանս բաղարջս,
եւ շօթս բաղարջս զանգեալ իւղով, եւ
քաքարս բաղարջս օծեալ իւղով. նաշիհ
ցորենոյ [17]զանգեալ իւղով արասցես զայն".
3 Եւ դիցես ի վերայ խանի միոյ. եւ մա-
տուսցես զայն խանիւն, եւ զզուարակն
4 եւ զերկուս խոյսն ։ Եւ զԱհարոն եւ զոր-
դիս նորա մատուսցես ի դուռն խորանին
վկայութեան, եւ լուասցես զնոսա ջրով ։
5 Եւ առեալ զպատմուճանսն՝ զգեցուսցես
Ահարոնի [18]եղբօր քում, եւ զպարեգօտս
պճղնաւորս ի վերայ ներքնակացն", եւ
զվակասն եւ զտախտակն. եւ պնդեսցես

[1]Եբր. ժապաւենի [2]Եբր. Տեառն [3][3]Եբր. [illegible] [4]Եբր. զՈւրիմ և զԹումիմ, [illegible] զլոյսն եւ զկատարելութիւնն [5]Եբր. զպարեգօտն վակասին [6]Եբր. եղիցի բերան գլխոյ նորա ի միջոցի նորա. շրթունք եղիցին բերանոյ նորա շուրջանակի, գործ անկուածոյ իբրեւ զբերան զրահի եղիցին նմա, զի մի՛ պատառեսցի [7]Եբր. ի քղանցս նորա նռնաձեւս [8]Եբր. քղանցիցն շուրջանակի [9]Եբր. նռնաձեւ, զանգակ ոսկի եւ նռնաձեւ ի վերայ քղանցից պարեգօտին [10]Եբր. ժապաւենի կապուտակին

[11]Եբր. ի վերայ խուրին. յերեսաց կողմանէ խուրին եղիցի ։ (38) Եւ եղիցի [12]Եբր. անկցես զշապիկն [13]Եբր. խոյր [14]Եբր. շապիկս, եւ արասցես նոցա կամարս, եւ ապարօշս արասցես նոցա [15]Լնուլ զձեռս՝ [illegible] նուիրել ի քահանայութիւն [16]Եբր. սրբել [17]Եբր. արասցես զնոսա [18]Եբր. զշապիկն եւ զպարեգօտ վակասին

6 զսախտակն [1]ընդ վակասն՝։ Եւ դիցես
զխոյրն ի վերայ գլխոյ նորա, եւ դիցես
7 զԹիԹեղնն սուրբ ի վերայ խուրին։ Եւ
առցես յիւղոյ անտի օծման, եւ արկցես
8 ի գլուխ նորա եւ օծցես զնա։ Եւ զոր-
դիս նորա մատուսցես, եւ զգեցուսցես
9 նոցա [2]պատմուճանս. Եւ ածցես նոցա
կամարս, Ահարոնի եւ որդւոց նորա, եւ
ածցես նոցա ապարօշս. եւ եղիցի նոցա
[3]այն ինձ ի քահանայութիւն՝ յաւիտե-
նական, եւ [4]կատարեսցես զձեռս Ահա-
րոնի եւ զձեռս որդւոց նորա։
10 Եւ մատուսցես զզուարակն առ դրան
խորանին վկայութեան, եւ դիցեն Ահա-
րոն եւ որդիք նորա զձեռս իւրեանց ի վե-
րայ գլխոյ զուարակին [5]առաջի Տեառն՝ առ
11 դրան խորանին վկայութեան։ Եւ սպան-
ցես զզուարակն առաջի Տեառն առ դրան
12 խորանին վկայութեան։ Եւ առցես յա-
րենէ զուարակին, եւ դիցես ի վերայ եղ-
ջերաց սեղանոյն մատամբ քով. եւ զայլն
ամենայն արիւն ցանեսցես առ յատակս
13 սեղանոյն։ Եւ առցես զամենայն ճարպ
Թաղանթոյ քարգրթին եւ զլերդապայթն եւ
զերկուս երիկամունսն ճարպովքն, [6]դիցես
14 ի վերայ սեղանոյն։ Եւ զմիս զուարակին
եւ զմորթ նորա եւ զապաւառն այրես-
ցես արտաքոյ բանակին. զի այն խակ է
վասն մեղաց։
15 Եւ զխոյն զմի՛ առցես, եւ դիցեն Ահա-
րոն եւ որդիք նորա զձեռս իւրեանց ի վե-
16 րայ գլխոյ խոյին։ Եւ զենցես զխոյն եւ
առեալ զարիւն նորա [7]հեղցես շուրջ զսե-
17 ղանովն։ Եւ զխոյն յօշեսցես անդամ ան-
դամ, եւ լուասցես զփորոտին եւ զոտս նո-
րա ջրով, եւ դիցես ի վերայ յօշուածոյն՝
18 հանդերձ գլխովլ նորա։ Եւ հանցես բո-
վանդակ զխոյն ի վերայ սեղանոյն յողջա-
կէզ Տեառն ի հոտ անուշից. զոհ Տեառն է։
19 Եւ առցես զխոյն զերկրորդ, եւ դիցեն
Ահարոն եւ որդիք նորա զձեռս իւրեանց
20 ի վերայ գլխոյ խոյին։ Եւ սպանցես զխոյն,
եւ առցես յարենէ նորա, եւ դիցես ի վե-
րայ բլթակի աջոյ ունկանն Ահարոնի, եւ
ի վերայ բլթակի աջոյ ունկան որդւոց
նորա, եւ [5]ի վերայ ծայրից ձեռին նորա
աջոյ, եւ ի վերայ ծայրից աջոյ ոտին նո-
րա, եւ ի վերայ աջուց ըլթակաց ականջաց որդւոց նորա, եւ՝ ի վերայ [8]ծայրից
աջոյ ձեռաց նոցա, եւ ի վերայ [8]ծայրից
աջոյ ոտից նոցա. եւ [7]հեղցես զարիւնն
21 շուրջ զսեղանովն։ Եւ առցես յարենէն
որ ի վերայ սեղանոյն իցէ, եւ յիւղոյ օծու-
Թեանն, եւ ցանեսցես ի վերայ Ահարոնի
եւ ի վերայ պատմուճանի նորա, եւ ի
վերայ որդւոց նորա եւ ի վերայ պատ-
մուճանաց որդւոց նորա ընդ նմա. եւ
սրբեսցի ինքն եւ պատմուճան իւր, եւ
որդիք նորա եւ պատմուճանք որդւոց
նորա ընդ նմա. [5]եւ զարիւն խոյին ցա-
22 նեսցես շուրջ զսեղանովն։՝ Եւ առցես ի
խոյէ անտի զճարպն եւ զդմակն եւ զճարպ
Թաղանթոյ քարգրթին, եւ զլերդապայթն
եւ զերկուս երիկամունսն ճարպովքն, եւ
զերրին աջոյ. զի այն է [9]կատարումն։
23 Եւ սպան մի եւ շօթ մի իւղով զանգեալ,
եւ քաքար մի ի խանէ անտի բաղարջոցն
24 եղելոց առաջի Տեառն, Եւ դիցես զայն
ամենայն ի վերայ ձեռացն Ահարոնի եւ ի
վերայ ձեռաց որդւոց նորա, եւ [10]նուի-
25 րեսցես զայն նուէր՝ առաջի Տեառն։ Եւ
առցես ի ձեռաց նոցա եւ [11]հանցես ի սե-
ղանն՝ ողջակիզաց ի հոտ անուշից առաջի
26 Տեառն. զի [12]պտուղ Տեառն է։ Եւ առ-
ցես զերրուծն ի խոյէ անտի [13]կատար-
ման՝ որ է Ահարոնի, եւ [14]նուիրեսցես
զայն նուէր՝ առաջի Տեառն. եւ եղիցի
27 քեզ ի մասն։ Եւ սրբեսցես զերրուծն [15]ի
նուէր, եւ զերրի նուիրին որ նուիրեցի,
եւ որ ինչ հանիցի ի խոյէն կատարման
28 յԱհարոնէ եւ յորդւոց՝ նորա։ Եւ եղիցի
Ահարոնի եւ որդւոց նորա օրէն յաւի-
տենական առ ի յորդւոցն Իսրայելի. զի
այն է [16]նոցա հաս, եւ եղիցի նուէր յորդ-
ւոցն Իսրայելի ի զենլեաց փրկութեանց
իւրեանց, նուէր՝ նոցա Տեառն։
29 Եւ պատմուճանն սրբութեան որ է Ա-
հարոնի, եղիցի որդւոց նորա յետ նորա,
օծանել զնոսա նոքօք, եւ [17]կատարել նո-
30 քօք զձեռս նոցա։ Զեւթն օր զգեցուցու
զայն քահանայն որ փոխանակ նորա կայ-

[1] Եբր. ժապաւէնիւ վակասին [2] Եբր. շապիկս [3] Եբր. քահանայութիւնն օրէն [4] Եբր. լցցես, տե՛ս Գլ. ԻԸ. 41. [5] Յեբր. դրանն [6] Եբր. այրեսցես [7] Եբր. արկեսցես

[8] Եբր. բութի [9] Եբր. խոյ լրման, այսինքն՝ նուիրման [10] Եբր. երերեսցես զնոսա երերումն [11] Եբր. այրեսցես ի վերայ սեղանոյն [12] Եբր. պատարագ [13] Եբր. լրման, այսինքն՝ նուիրման [14] Եբր. երերեսցես զայն երերումն [15] Եբր. երերման, եւ զերին վերացման, որ երերեալ եւ որ վերացեալ իցէ, ի խոյէ անտի նուիրման որ վասն Ահարոնի եւ որ վասն որդւոց [16] Եբր. վերացումն, եւ վերացումն իցէ յորդւոցն Իսրայելի ի զոհից խաղաղութեան իւրեանց, վերացումն [17] Եբր. լնուլ, տե՛ս Գլ. ԻԸ. 41.

ցէ յորդւոց իւրոց, որ մտանիցէ ի խո-
րանն վկայութեան պաշտել ի սրբու-
31 թիւնսն։ Եւ զխոյն [1]կատարման առցես,
եւ եփեսցես զմիս նորա ի սրբում տեղ-
32 ւոջ. Եւ կերիցեն Ահարոն եւ որդիք նո-
րա զմիս խոյին, եւ զհացն որ ի խանի
անդ՝ առ դրան խորանին վկայութեան։
33 Եւ կերիցեն զնոսա, որովք սրբեցանն՝ ի
կատարել զձեռս նոցա եւ սրբել զնոսա.
օտարազգի ոք մի կերիցէ ի նոցանէ, զի
34 սրբութիւնք են։ Ապա թէ մնայցէ ի մսոյ
զոհին կատարման եւ ի հացէ անտի յայգ,
այրեսցես զմնացորդն հրով, եւ մի կերի-
ցի, զի սրբութիւն [2]Տեառն է։
35 Եւ արասցես Ահարոնի եւ որդւոց նորա
այսպէս, ըստ ամենայնի զոր միանգամ
պատուիրեցի քեզ, զեւթն օր կատարես-
36 ցես զձեռս նոցա։ Եւ [3]զզուարակն զվասն"
մեղաց՝ արասցես յաւուրն [4]սրբութեան.
եւ մաքրեսցես զսեղանն ի [5]սրբել քեզ ի
վերայ" նորա, եւ օծցես զնա առ ի սրբե-
37 լոյ զնա։ Զեւթն օր [6]մաքրեսցես զսե-
ղանն եւ սրբեսցես զնա. եւ եղիցի սե-
ղանն սուրբ սրբոյն. ամենայն որ մեր-
ձեսցի ի սեղանն՝ սրբեսցի։
38 Եւ այս ինչ իցէ զոր առնիցես ի վերայ
սեղանոյն. երկուս գառինս տարեւորս
[2]անարատս՝ առ օր ի վերայ սեղանոյն
յաճախութեամբ. [2]զի պտուղ յաճախու-
39 թեան է." Զմի գառնն առնիցես ընդ առա-
ւօտս, եւ զերկրորդ գառնն առնիցես ընդ
40 երեկոյս։ Եւ տասանորդ նաշհոյ՝ մզեալ
իւղով թրմեալ, եւ զչորրորդ դորակի, եւ
նուէր ըստ չորրորդ դորակի գինւոյ առ
41 մի գառն։ Եւ զգառնն երկրորդ արա-
ցես ընդ երեկոյս՝ ըստ առաւօտին զո-
հին, եւ ըստ նորին նուիրին առնիցես նմա
42 ի հոտ անուշից [7]պտուղ Տեառն։ Զոհ յա-
ճախութեան յազգս ձեր, առ դրան խո-
րանին վկայութեան առաջի Տեառն, [8]ո-
րովք ծանուցայց քեզ անդ խօսել ընդ քեզ։
43 Եւ [9]ժամանակեցից անդ որդւոցն Իսրա-
44 յելի, եւ [10]սրբեցայց փառօք իմովք։ Եւ
սրբեցից զխորան վկայութեանն եւ զսե-
ղանն, եւ զԱհարոն եւ զորդիս նորա սրբե-
45 ցից ինձ ի քահանայութիւն։ Եւ [11]անուա-
նեցայց յորդիսն Իսրայելի, եւ եղէց նոցա
46 Աստուած. Եւ ծանիցեն թէ ես եմ Տէր
Աստուած նոցա, որ հանի զնոսա յերկ-
րէն Եգիպտացւոց, [12]անուանել նոցա եւ
լինել նոցա Տէր Աստուած"։

## ԳԼ. Լ

1 Եւ արասցես սեղան խնկական խնկոց
2 յանփուտ փայտից. Եւ արասցես զնա
կանգնաւ յերկայնութիւն եւ կանգնաւ ի
լայնութիւն, չորեքկուսի լինիցի, եւ յեր-
կուց կանգնոց բարձրութիւն նորա. եւ
եղջիւրք իւր անդստին ի նմանէ լինի-
3 ցին։ Եւ պատեսցես զնա ոսկւով սրբով,
[13]զվանդակն նորա եւ զկողմանս շուր-
ջանակի եւ զեղջիւրս նորա. եւ արասցես
նմա պսակ ոսկի շրջանակաւ շուրջանա-
4 կի։ Եւ երկուս օղս ոսկիս [2]սուրբս ա-
րասցես ընդ շրջանակաւ պսակի նորա
յերկոցունց կողմանց. եւ արասցես յեր-
կոսին անկիւնս նորա, եւ եղիցին լծակք
5 օղալամբացն բառնալ զնա նոքօք։ Եւ
արասցես զլծակսն յանփուտ փայտից,
6 եւ պատեսցես զնոսա ոսկւով. Եւ դիցես
զնա յանդիման վարագուրին, որ իցէ ա-
ռաջի տապանակին վկայութեան, ընդ-
դէմ [14]վկայութեանն՝ որ իցէ առ վկայու-
թեամբն, որովք" երեւեցայց քեզ անդ։
7 Եւ արկցէ ի վերայ նորա Ահարոն [15]խունկ
հանդերձեալ՝ ազացեալ մանր" ընդ առա-
ւօտս առաւօտս, յորժամ զճրագսն հան-
դերձիցէ, ծխեսցէ խունկ [2]ի վերայ նորա"։
8 Եւ յորժամ լուցանիցէ Ահարոն զճրագսն
երեկորին, ծխեսցէ [2]ի վերայ նորա"
խունկս յաճախութեան հանապազորդ ա-
9 ռաջի Տեառն յազգս [16]իւրեանց։ Եւ ոչ
հանիցէք ի վերայ նորա խունկ օտար, եւ
[17]պտուղս եւ զոհս", եւ նուէրս մի նուի-
10 րիցէք ի վերայ նորա։ Եւ քաւեսցէ Ահա-
րոն ի վերայ եղջերաց նորա միանգամ ի
տարւոջ. յարենէ առ ի վասն մեղացն
[2]սրբութեան եւ" քաւութեան միանգամ
ի տարւոջ [18]սրբեսցէ զնա յազգս [16]նոցա.
զի սրբութիւն սրբութեանց Տեառն է։
11 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
12 Եթէ ունիցիս զհամար որդւոցն Իսրայելի
ի հանդիսի իւրեանց, տացեն իւրաքան-
չիւր փրկանս ընդ անձին իւրոյ Տեառն

---

[1]Եբր. լրման տօնին՝ նուիրման [2]Եբր. պակասէ [3]Եբր. զուարակ վասն [4]Եբր. վասն քաւութեան [5]Եբր. քաւել քեզ վասն [6]Եբր. քաւեսցես [7]Եբր. պատարագ [8]Եբր. ուր [9]Եբր. հանդիպեցայց [10]Եբր. սրբեսցի խորանն [11]Եբր. բնակեցայց

[12]Եբր. բնակել ի նոսա. ես եմ Տէր Աստուած նոցա [13]Եբր. զյարկ [14]Եբր. քաւութեանն որ իցէ առ վկայութեամբն, ուր [15]Եբր. խունկս անուշունս [16]Եբր. ձեր [17]Եբր. ողջակէզս եւ ընծայս [18]Եբր. քաւեսցէ

ըստ համարսն իւրեանց, եւ մի՛ լինիցի
ի նոսա մահ ի համարի անդ իւրեանց։
13 Եւ այս ինչ է զոր տացեն որք անցանի-
ցեն ի համարի անդ. զկէս [1]երկդրամենին
որ իցէ ըստ սրբութեան [1]երկդրամենին.
քսան դանգ է [2]երկդրամեանն. եւ կէս
14 [1]երկդրամենին եղիցի հաս Տեառն։ Ամե-
նայն որ անցանիցէ ի համարի անդ ի քսա-
նամենից եւ ի վեր՝ տացեն հաս Տեառն։
15 Մեծատունն մի՛ յաւելցէ, եւ տնանկն մի՛
պակասեցուսցէ ի կիսոյ [1]երկդրամենին ի
տալ անդ զհաս Տեառն [3]յորդւոցն Իսրա-
յէլի", առնել քաւութիւն վասն անձանց
16 ձերոց։ Եւ առցես զարծաթ [4]հասին յորդ-
ւոցն Իսրայէլի, եւ տացես զնա ի գործ
խորանին վկայութեան, եւ եղիցի որդ-
ւոցն Իսրայէլի յիշատակ առաջի Տեառն,
քաւել վասն անձանց նոցա։
17 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
18 Արա աւազան պղնձի, եւ զխարիսխ նո-
րա պղնձի, առ ի լուանալոյ ի նմա. եւ
դիցես զնա ընդ խորանն վկայութեան եւ
19 ընդ սեղանն, եւ արկցես ի նա ջուր։ Եւ
լուասցեն Ահարոն եւ որդիք նորա ի
20 նմանէ զձեռս եւ զոտս իւրեանց։ Յոր-
ժամ մտանիցեն ի խորանն վկայութեան՝
լուասցին ջրով եւ մի՛ մեռանիցին, կամ
յորժամ մերձենայցեն ի սեղանն պաշտել,
21 եւ հանել զողջակէզսն Տեառն. Լուա-
ցեն զձեռս եւ զոտս իւրեանց, զի մի՛ մե-
ռանիցին. եւ եղիցի նոցա օրէն յաւիտե-
նական, նմա եւ ազգաց նորա յետ նոցա։
22 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
23 Եւ դու ա՛ռ քեզ խունկս անուշունս, ծա-
ղիկ ընտիր զմանենեաց հինգ հարիւր սիկղ,
եւ կինամոմոն զանոյշ զկէս այնորիկ՝ եր-
կերիւր եւ յիսուն, եւ զխունկեղէգն զա-
24 նոյշ՝ երկերիւր եւ յիսուն, Եւ հիրիկ հինգ
հարիւր սիկղ ըստ սրբութեանն, եւ եւղ
25 ի ձիթենեաց հիմենու միոյ. Եւ արաս-
ցես զայն եւղ յօծութեան սրբութեան, եւղ
եփեալ ըստ արուեստի իւղագործաց, եւղ
26 յօծումն սրբութեան լինիցի։ Եւ օծցես
ի նմանէ զխորան վկայութեանն եւ զտա-
27 պանակ վկայութեանն, Եւ զսեղանն եւ
զամենայն զկահ նորա, եւ զաշտանակն
եւ զամենայն զկահ նորա, եւ զսեղան
28 խնկոցն, Եւ զսեղան ողջակիզացն եւ
զամենայն զկահ նորա, եւ զաւազանն
29 եւ [5]զյատակ նորա։ Եւ սրբեսցես զնոսա,

[1]Եբր. սկեղն [2]Եբր. սիկղն [3]Եբր. զ-ն-ւե [4]Եբր. քաւութեանն [5]Կամ, զխարիսխ, տես Գլ. ԼԱ. 9։

եւ եղիցի սրբութիւն սրբութեանց. ա-
մենայն որ մերձենայցէ ի նոսա՝ սրբես-
30 ցի։ Եւ զԱհարոն եւ զորդիս նորա օծ-
ցես եւ սրբեսցես զնոսա ինձ ի քահանա-
31 յութիւն։ Եւ ընդ որդիսն Իսրայէլի խօ-
սեսցիս եւ ասասցես, Եւղ յօծումն օծու-
32 թեան սրբոյ եղիցի ձեզ յազգս ձեր։ Ի
մարմին մարդոյ ոչ օծանիցի, եւ ըստ
այդմ հանգերձանի ոչ առնիցէք ձեզ այդ-
պիսի, զի սուրբ է, եւ ի սրբութիւն եղիցի
33 ձեզ։ Որ ոք առնիցէ այդպիսի, եւ որ ոք
տացէ ի դմանէ այլազգւոյ, սատակեսցի
ի ժողովրդենէ իւրմէ։
34 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ա՛ռ դու քեզ
խունկս անուշունս, ստաշխն եւ եղունգն
եւ զքաղբանն զանոյշ եւ զկնդրուկ զե-
րեւելի. զի հաւասարակ առ հաւասարակ լի-
35 նիցին. Եւ արասցես զայն խունկ եփ-
եալ, գործ իւղագործաց հանգերձանի,
36 գործ մաքուր ի սրբութիւն։ Եւ աղաս-
ցես ի նոցանէ մանր, եւ դիցես ի նմա-
նէ յանդիման վկայութեանն ի խորանին
վկայութեան, ուստի երեւեցայց քեզ
անտի. ի սրբութիւն սրբութեանցն ե-
ղիցի ձեզ խունկն այն զոր առնիցէք։
37 Ըստ այնմ հանգերձանի մի՛ առնիցէք ձեզ
խունկս. զի սրբութիւն Տեառն եղիցի
38 ձեզ։ Այր ոք որ առնիցէ ըստ այնմ
օրինակի՝ առնուլ հոտ ի նմանէ, կորիցէ
ի ժողովրդենէ իւրմէ։

## ԳԼ. ԼԱ.

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Ահաւասիկ յանուանէ կոչեցեալ է իմ զԲե-
սելիէլ զՈւրիեան, զորդի Ովրայ յազգէ
3 Յուդայ. Եւ լցուցի զնա աստուածեղէն
Հոգւով իմաստութեան եւ հանճարոյ եւ
4 գիտութեան ամենայն գործոյ, Խելամուտ
լինել եւ ճարտարապետել, գործել զոս-
5 կին եւ զարծաթ եւ զպղինձ, [6]Զկապու-
տակն եւ զծիրանին եւ զկարմիրն մանե-
եալ. եւ զականակապն ի յղութիւն գոր-
ծոյն", եւ զհիւսնութիւն փայտից, գործել
6 ըստ ամենայն գործոյ։ Եւ ես ահա ետու
զնա եւ զԵղիաբ Աքիսամայ յազգէ Դա-
նայ. եւ ի սիրտ ամենայն իմաստնոյ ետու
զիմաստութիւն, եւ արասցեն զամե-
նայն զոր միանգամ պատուիրեցի քեզ.
7 Զխորանն վկայութեան եւ զտապանակ
կտակարանացն եւ զքաւութիւնն որ ի
վերայ նորա, եւ զամենայն զսպաս խո-

[6]Եբր. Եւ զականակապն ի լրութիւն

8 րանիրն [1]եւ զգոհանոցսն", Եւ զսեղանն
եւ զամենայն զկահ նորա, եւ զաշտա-
նակն սուրբ եւ զամենայն զկահ նորա,
9 եւ զսեղան խնկոցն, Եւ զսեղան ողջա-
կիզացն եւ զամենայն զկահ նորա, եւ
10 զաւազանն եւ զխարիսխ նորա, Եւ
զպատմուճանս պաշտամանն, եւ զհան-
դերձս սրբութեանն զԱհարոնի քահա-
նայի, եւ զպատմուճանս որդւոց նորա ի
11 քահանայանալ ինձ, Եւ զեւղն օծու-
թեան եւ զխունկս հանդերձանաց սըր-
բութեանն, եւ զամենայն զոր միանգամ
պատուիրեցի քեզ՝ [2]արասցես։
12 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
13 Եւ դու խօսեաց ընդ որդիսն Իսրայելի եւ
ասասցես, Զգոյշ կացէք պահելոյ զշա-
բաթս իմ. զի նշանակ է ընդ իս եւ ընդ
ձեզ յազգս ձեր, զի ծանիջիք թէ ես
14 եմ Տէր որ սրբեմ զձեզ։ Եւ պահեսջիք
զշաբաթս, զի սրբութիւն է այն [1]Տեառն
եւ" ձեզ. որ պղծեսցէ զնա՝ մահու մեռ-
ցի. ամենայն որ գործիցէ ի նմա գործ,
սատակեսցի անձն այն ի միջոյ ժողովրդ-
15 դեան իւրոյ։ Զվեց օր գործեսցես գործ,
եւ յաւուրն եւթներորդի շաբաթ հան-
գստեան սրբութիւն Տեառն. ամենայն
որ գործեսցէ գործ յաւուր շաբաթու՝
16 մահու մեռցի։ Եւ պահեսցեն որդիքն
Իսրայելի [3]զշաբաթս՝ առնել զնոսա յազգս
17 ձեր" ուխտ յաւիտենական։ Ընդ իս եւ
ընդ որդիսն Իսրայելի, նշանակ [1]իմ է
յաւիտենական. զի զվեց օր արար Տէր
զերկինս եւ զերկիր, եւ յաւուրն եւթնե-
րորդի դադարեաց եւ հանգեաւ։
18 Եւ ետ Մովսիսի, իբրեւ դադարեաց ինքն
ի խօսից իւրոց ի լերինն Սինա, զերկոսս
տախտակսն վկայութեան, տախտակս
քարեղէնս գրեալս մատամբն Աստուծոյ։

ԳԼ. ԼԲ

1 Եւ տեսեալ ժողովրդեանն եթէ յամեաց
Մովսէս իջանել ի լեռնէ անտի, կուտե-
ցաւ ժողովուրդն ի վերայ Ահարոնի եւ
ասեն ցնա, Արի եւ արա մեզ աստուածս
որ առաջնորդեսցեն մեզ. զի այրն այն
Մովսէս որ եհան զմեզ յԵգիպտոսէ, ոչ
2 գիտեմք զի՛ եղեւ նմա։ Եւ ասէ ցնոսա
Ահարոն, Կողոպտեցէք զգինդս ոսկիս
յականջաց կանանց ձերոց եւ ուստերաց
եւ դստերաց ձերոց, եւ բերէք առ իս։
3 Եւ կողոպտեաց ամենայն ժողովուրդն
զգինդս ոսկիս յականջաց իւրեանց, եւ
4 բերին առ Ահարոն։ Եւ ընկալաւ ի ձե-
ռաց նոցա, եւ ձուլեաց զայն քանդա-
կագործով, եւ արար որթ ձուլածոյ։ Եւ
ասեն, Այս են աստուածք քո, Իսրայէլ,
որ հանին զքեզ յերկրէն Եգիպտացւոց։
5 Եւ իբրեւ ետես Ահարոն, շինեաց սեղան
առաջի նորա. եւ քարոզ կարդաց Ահա-
րոն եւ ասէ, Տօն Տեառն առ վաղիւ։
6 Եւ կանխեալ ի վաղիւ անդր եհան ող-
ջակէզս, եւ մատոյց զոհս [4]փրկութեան.
եւ նստաւ ժողովուրդն յուտել եւ յըմ-
պել, եւ յարեան ի խաղալ։
7 Եւ Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
ասէ, Գնա էջ դու աստի [1]վաղվաղակի,
զի անօրինեցաւ ժողովուրդն քո զոր
8 հաներ յերկրէն Եգիպտացւոց։ Անցին
վաղվաղակի զճանապարհաւն զոր [5]պատ-
ուիրեցեր նոցա. արարին իւրեանց որթ
ձուլածոյ, եւ երկիր պագին նմա, եւ
զոհեցին նմա եւ ասեն, Այս են աստ-
ուածք քո, Իսրայէլ, որ հանին զքեզ
9 յերկրէն Եգիպտացւոց։ Եւ ասէ Տէր
ցՄովսէս, Տեսի զժողովուրդն զայն, եւ
10 ահա ժողովուրդ խստապարանոց է։ Եւ
Արդ թող տուր ինձ, եւ բարկացեալ
սրտմտութեամբ իմով ի նոսա՝ սատակե-
ցից զնոսա, եւ արարից զքեզ յազգ մեծ։
11 Եւ աղաչեաց Մովսէս առաջի Տեառն
Աստուծոյ իւրոյ եւ ասէ, Ընդէ՞ր, Տէր,
բարկանաս սրտմտութեամբ քով ժողո-
վրդեան քում, զոր հաներ յերկրէն
Եգիպտացւոց զօրութեամբ մեծաւ եւ
12 բարձր բազկաւ. [6]Գուցէ խօսիցին Եգիպ-
տացիքն եւ ասիցեն, Առ չարութեան
եհան զնոսա, կոտորել զնոսա ի լերինս
եւ ջնջել զնոսա յերկրէ. դադարեա ի
բարկութենէ սրտմտութեան քո, եւ
13 ցածիր ի չարեաց ժողովրդեան քո։ Յիշեա
դու զԱբրահամ եւ զԻսահակ եւ զՅակոբ
զծառայս քո, որոց երդուար յանձն քո,
խօսեցար ընդ նոսա եւ ասես, [1]Առաւել
բազմացուցից զզաւակ ձեր իբրեւ զաս-
տեղս երկնից բազմութեամբ. եւ զամե-
նայն զերկիրն զայն զոր [7]ասացեր տալ
զաւակի նոցա՝ կալցին զնա յաւիտեան։
14 Եւ ցածեաւ Տէր ի չարեացն զոր ասաց
առնել ժողովրդեան իւրում։

[1] Յեբր. դոյաւե [2] Եբր. արասցեն [3] Եբր. զշա-
բաթն՝ առնել զշաբաթն յազգս իւրեանց

[4] Եբր. խաղաղութեան [5] Եբր. պատուիրեցի
[6] Եբր. Ընդէ՞ր [7] Եբր. ասացի

15 Եւ դարձաւ Մովսէս էջ ի լեռնէ անտի,
և երկու տախտակքն վկայութեանն ի ձեռս
նորա. տախտակք ¹քարեղէնք, գրեալք
յերկոցունց կողմանց, աստի և անտի
16 գրեալք։ Եւ տախտակքն՝ գործ Աստուծոյ
էին. և գիրն՝ Գիր Աստուծոյ գրոշմեալ ի
17 տախտակսն։ Եւ լուեալ Յեսուայ զձայն
ժողովրդեանն աղաղակելոյ, ասէ ցՄով-
սէս, Ձայն պատերազմի է ի բանակի
18 անդ։ Եւ ասէ, Ոչ է ձայն նահատակաց
զօրութեան, և ոչ բարբառ նահատակաց
²քաջութեան, այլ ձայն յանդգնելոց ի
19 գինւոյ՚՚ լսեմ ես։ Եւ իբրև մերձեցաւ ի
բանակ անդր, և ետես զորթն և զպա-
րուսն, բարկացեալ սրտմտութեամբ
Մովսէս՝ ընկէց ի ձեռաց իւրոց զտախ-
տակսն ¹երկոսին, և խորտակեաց զնոսա
20 առ ստորոտով լերինն։ Եւ առեալ զորթն
զոր արարին՝ այրեաց հրով, և խարտեաց
զնա մանր, և ցանեաց ի վերայ ջրոյն
և արբոյց որդւոցն Իսրայելի։
21 Եւ ասէ Մովսէս ցԱհարոն, Զի՞նչ ա-
րար քեզ ժողովուրդդ, զի ածեր ի վե-
22 րայ դոցա զանհնարին մեղս։ Եւ ասէ
Ահարոն ցՄովսէս, Մի՛ բարկանար սրտ-
մտութեամբ, տէր իմ, զի դու ինքնին
գիտես զյանդգնութիւն ժողովրդեանդ.
23 Զի ասացին՝ թէ Արա մեզ աստուածս
որ առաջնորդեսցեն մեզ, զի այրն այն
Մովսէս որ եհան զմեզ յԵգիպտոսէ՝ ոչ
24 գիտեմք զի՛ եղև նմա։ Եւ ասեմ ցնո-
սա, Եթէ իցէ ուրուք ոսկի, կողոպտե-
ցէք և բերէք. և ետուն ցիս. և ըն-
կեցի զայն ի հուր, և ել որթդ այդ։
25 Եւ ետես Մովսէս եթէ յանցեաւ ժո-
ղովուրդն, քանզի յանցոյց զնոսա Ահա-
րոն յանհարութիւն թշնամեաց իւրեանց,
26 Եւ եկաց Մովսէս առ դրան բանակին և
ասէ, Որ ոք Տեառն իցէ՝ առ իս մատիցէ.
հասանէին առ նա ամենայն որդիքն Ղև-
27 եայ։ Եւ ասէ ցնոսա, Այսպէս ասէ Տէր
Աստուած Իսրայելի, Դիք իւրաքանչիւր
զսուր իւր յազդեր իւրում. անցէք և
այսրէն դարձարուք դրանէ ի դուռն բա-
նակիդ, և կոտորեցէք իւրաքանչիւր զեղ-
բայր և իւրաքանչիւր զընկեր իւր, և
28 իւրաքանչիւր զմերձաւոր իւր։ Եւ արա-
րին որդիքն Ղևեայ որպէս ասաց Մով-
սէս. և անկան ի ժողովրդենէ անտի յա-
29 ւուր յայնմիկ իբրև երեք հազար այր։ Եւ
ասէ ցնոսա Մովսէս, ³Լցէք զձեռս ձեր
այսօր Տեառն իւրաքանչիւր յորդի իւր,
և իւրաքանչիւր յեղբայր իւր, տալ ի
վերայ ձեր այսօր օրհնութիւն։
30 Եւ եղև ի վաղիւ անդր, և ասէ Մով-
սէս ցժողովուրդն, Դուք մեղայք զմեղս
զայդ զմեծ. բայց ես արդ ելից առ ⁴Աս-
տուած, զի ցածուցից վասն մեղացդ ձե-
31 րոց։ Դարձաւ Մովսէս անդրէն առ Տէր
և ասէ, Աղաչեմ զքեզ, Տէր, մեղաւ
ժողովուրդն այն մեղս անհնարինս, և
արարին իւրեանց աստուածս ոսկեղէնս։
32 Արդ եթէ թողուս նոցա զմեղս իւրեանց,
թող. ապա թէ ոչ, ջնջեա զիս ի դպրու-
33 թենէ քումմէ յոր գրեցեր։ Եւ ասէ Տէր
ցՄովսէս, Եթէ ոք մեղաւ առաջի իմ,
34 ջնջեցից զնա ի դպրութենէ իմմէ։ Բայց
արդ՝ երթ էջ և առաջնորդեա ժողովրդ-
եանն այնմիկ ի տեղին յոր ասացի քեզ.
և ահա հրեշտակ իմ երթիցէ առաջի
երեսաց քոց. բայց յաւուր յորում այց
արարից, ածից ի վերայ նոցա զմեղս իւր-
35 եանց։ Եւ եհար Տէր զժողովուրդն վասն
առնելոյ զորթն զոր արար Ահարոն։

ԳԼ. ԼԳ

1 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Երթ ել աստի,
դու և ժողովուրդն քո զոր հաներ
յերկրէն Եգիպտացւոց, յերկիրն զոր երդ-
ուայ Աբրահամու, Իսահակայ և Յա-
կոբայ, ասեմ, Զաւակի ձերում տաց զնա։
2 Եւ առաքեցից առաջի երեսաց քոց ⁵զհրեշ-
տակ իմ, և մերժեսցէ՚՚ զՔանանացին
և զԱմովրհացին և զՔետացին և զՓե-
րեզացին և ¹զԳերգեսացին և՚՚ զԽեւա-
3 ցին և զՅեբուսացին։ Եւ տարցի զքեզ
յերկիրն որ բղխէ զկաթն և զմեղր. բայց
ես ոչ ելից ընդ քեզ, վասն խստապարա-
նոց լինելոյ ժողովրդեանն. զի մի՛ սատա-
4 կիցեմ զքեզ ի ճանապարհի։ Եւ լուեալ
ժողովրդեանն զբանն զայն չար, սուգ առին
¹սգաւորօք. և ոչ ոք այր զզարդ զանձամբ։
5 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ասա դու ցորդիսն
Իսրայելի, Դուք ժողովուրդ խստապարա-
նոց էք. զգոյշ լերուք, զուցէ և այլ
եւս հարուած ածիցեմ ի վերայ ձեր, և
սատակիցեմ զձեզ. արդ մերկացարուք
զպատմուճանս փառաց ձերոց, ¹և զզարդ
քո ի քէն,՚՚ և ⁶ցուցից քեզ՚՚ զինչ առ-

¹Յեբր. պախարակ ²Եբր. պարտութեան, այլ ձայն երգոց

³Այլ օրինակ՝ Նուիրեցէք ⁴Եբր. Տէր ⁵Եբր. հրեշտակ, և մերժեցից ⁶Եբր. գիտացից

6նիցեմ քեզ։ Եւ մերկացան որդիքն Իսրայէլի զզարդ իւրեանց, [1]եւ զպատմուճանս իւրեանց" ի Քորեբ լերին։
7 Եւ առեալ Մովսէսի [2]զխորան իւր" եհար արտաքոյ բանակին, մեկուսի ի բանակէ անտի, եւ [3]կոչեցաւ այն Խորան վկայութեան". եւ լինէր ամենայն ոք որ խնդրէր [4]ինչ ի Տեառնէ", ելանէր ի խորանն վկայութեան արտաքոյ բա-
8նակին։ Եւ յորժամ երթայր Մովսէս ի խորանն, կայր ամենայն ժողովուրդն զէտակն կալեալ իւրաքանչիւր ուրուք առ դուրս խորանի իւրոյ, եւ հայէին ընդ Մովսէս մինչ երթայր մտանէր ի խորանն.
9 Եւ յորժամ մտանէր Մովսէս ի խորանն, իջանէր սիւն ամպոյն եւ կայր առ դուրս խորանին, եւ խօսէր [1]Տէր ընդ Մովսէսի։
10 Եւ տեսանէր ամենայն ժողովուրդն զսիւն ամպոյն որ կայր առ դուրս խորանին. եւ կային ամենայն ժողովուրդն յոտն, եւ երկիր պագանէին իւրաքանչիւր առ
11 դուրս խորանի իւրոյ։ Եւ խօսէր Տէր ընդ Մովսէսի դէմ յանդիման, որպէս ոք զի խօսիցի ընդ բարեկամի իւրում. եւ դառնայր ի բանակ անդր. բայց սպասաւորն նորա Յեսու որդի Նաւեայ ոչ ելանէր ի խորանէ անտի։
12 Եւ ասէ Մովսէս ցՏէր, Ահա դու ասես ցիս, Հան զժողովուրդդ զայդ. եւ դու ոչ ցուցեր ինձ զո՛ առաքիցես ընդ իս. եւ դու ցիս ասացեր, Թէ ճանաչեմ զքեզ [5]քան զամենեսին", եւ ունիս շնորհս յի-
13նէն։ Արդ եթէ գտի շնորհս առաջի քո, [6]ցոյց ինձ զանձն քո յայտնապէս, զի գիտացից թէ իւ գտեալ իցէ իմ շնորհս առաջի քո. եւ զի ծանեայց թէ ժողո-
14վուրդս քո այս՝ յազգ մեծ լինիցի։ Եւ ասէ, Ես ինքնին երթայց առաջի քո, եւ
15զհանգուցից զքեզ։ Եւ ասէ ցնա, Եթէ ոչ դու ինքնին երթայցես" ընդ մեզ, մի՛
16հաներ զմեզ աստի։ Եւ զիա՞րդ յայտնի լինիցի, եթէ արդարեւ գտի շնորհս առաջի քո, եւ ես եւ ժողովուրդս քո, այլ յերթալն քո ընդ [7]մեզ փառաւորեսցուք",

[1]Եբր. զարդ [2]Եբր. զխորանն [3]Եբր. կոչեաց զայն Խորան ժողովոյ (խորան ժողովոյ Թարգմանեալ է մեզ բազում անգամ խորան վկայութեան) [4]Եբր. զՏէր [5]Եբր. յանուանէ [6]Եբր. տուր ինձ գիտել զճանապարհս քո, և գիտացից զքեզ, զի գտից շնորհս յաչս քո, եւ տես զի ազգս այս ժողովուրդ քո է։ (14) Եւ ասէ, Երեսք իմ երթիցեն, եւ հանգուցից զքեզ։ (15) Եւ Մովսէս ասէ ցնա, եթէ ոչ երեսք քո երթիցեն [7]Եբր. մեզ, եւ որոշեսցուք

եւ ես եւ ժողովուրդս քո [8]քան զամենայն ազգս" որ իցեն ի վերայ երկրի։
17 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Եւ զայդ եւս զքո բան զոր ասացեր՝ արարից. քանզի գտեր շնորհս առաջի իմ, եւ ճանաչեմ
18 զքեզ [5]քան զամենեսեան"։ Եւ ասէ,
19 Ցոյց ինձ զփառս քո։ Եւ ասէ, Ես [9]անցից առաջի քո փառօք իմովք", եւ կոչեցից յանուն Տեառն առաջի քո, եւ ողորմեցայց որում ողորմեցայց, եւ գթացայց
20 յոր գթացայց։ Եւ ասէ, Ոչ կարես տեսանել զերեսս իմ, զի ոչ տեսանէ մարդ
21 զերեսս իմ եւ ապրի։ Եւ ասէ Տէր, Ահա տեղի մի առաջի իմ, եւ կացցես ի վե-
22 րայ վիմին. Յորժամ անցանիցեն փառքն իմ, եւ եդից զքեզ ի ծերպի վիմին, եւ ծածկեցից զքեզ ձեռամբ իմով մինչեւ
23 անցից ես. Եւ բարձից զձեռն իմ [1]ի քէն, եւ ապա տեսցես զյետոյսն իմ, բայց երեսք իմ քեզ մի՛ երեւեսցին։

ԳԼ. ԼԴ

1 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Կոփեա դու քեզ երկուս տախտակս քարեղէնս ըստ առաջնոց տախտակացն, [1]եւ ել առ իս ի լեառնն." եւ գրեցից ի վերայ տախտակացն զպատգամսն որ էին յառաջին տախ-
2տակսն զոր խորտակեցերն։ Լեր պատրաստ առ վաղիւ, եւ ելանիցես ընդ առաւօտս ի լեառնն Սինա, եւ մնասցես
3 ինձ անդ ի վերայ գլխոյ լերինն։ Եւ մի՛ ոք ելանիցէ ընդ քեզ, եւ մի՛ ոք երեւեսցի ամենեւին ի լերինն, եւ արջառ եւ ոչխար մի՛ արածեսցին մօտ ի լեառնն։
4 Եւ կոփեաց երկուս տախտակս քարեղէնս ըստ օրինակի առաջնոցն. եւ կանխեալ Մովսէսի ընդ առաւօտն՝ ել ի լեառնն Սինա, որպէս հրամայեաց նմա Տէր, եւ ա՛ռ Մովսէս ընդ իւր զերկուս տախտակսն
5 քարեղէնս։ Եւ էջ Տէր ամպով, եւ կայր յանդիման նորա անդ. եւ կոչեաց յա-
6նուն Տեառն։ Եւ անց Տէր առաջի նորա. եւ կարդաց, [10]Տէր Աստուած՝ գթած եւ ողորմած, երկայնամիտ, բազում-
7ողորմ եւ ճշմարիտ, Որ պահէ [1]զարդարութիւն, եւ առնէ" զողորմութիւն ի հազար ազգս, բառնայ զանօրէնութիւնս եւ զանիրաւութիւնս եւ զմեղս, եւ ոչ

[8]Եբր. յամենայն ազգաց [9]Եբր. անցուցից զամենայն բարութիւնս իմ ընդ երեսս քո [10]Եբր. Տէր, Տէր,

անպարտ առնէ զպարտաւորն. ածէ զա-
նօրէնութիւնս հարց յորդիս եւ յորդւոց
յորդիս մինչեւ յերիս եւ ի չորս ազգս։
8 Եւ փութացեալ Մովսէս, [1]խոնարհ երկիր"
9 եպագ եւ ասէ, Եթէ գտի շնորհս առաջի
քո, Տէր, երթիցէ ընդ մեզ Տէր. զի
ժողովուրդս խստապարանոց է. եւ բարձ-
ցես դու զանօրէնութիւնս եւ զմեղս
մեր, եւ եղիցուք մեք քո։
10 Եւ ասէ [2]Տէր ցՄովսէս", Ահա ես դնեմ
ընդ քեզ ուխտ. առաջի ամենայն ժո-
ղովրդեան քո արարից սքանչելիս որ ոչ
եղեն յամենայն երկրի եւ յամենայն ազգս.
եւ տեսցէ ամենայն ժողովուրդ յորս ես
դու ի միջի դոցա՝ զգործս Տեառն. զի
զարմանալիք եղեն զոր ես արարից ձեզ։
11 Զգոյշ լեր դու ամենայնի զոր միանգամ
ես պատուիրեմ քեզ այսօր. ահաւասիկ
ես մերժեմ յերեսաց ձերոց զԱմովրհա-
ցին եւ զՔանանացին եւ զՔետացին եւ
զՓերեզացին եւ զԽեւացին [2]եւ զԳեր-
12 գեսացին" եւ զՅեբուսացին։ Զգոյշ լեր
անձին քում, գուցէ դնիցես ուխտ ընդ
բնակիչս երկրին, յոր դու մտանիցես ի
նոսա, գուցէ լինիցի ձեզ գայթակղութիւն։
13 Զբագինս նոցա կործանեսջիք, եւ զար-
ձանս նոցա փշրեսջիք, եւ [3]զանտառս
նոցա կոտորեսջիք, [2]եւ զդրօշեալս դից
14 նոցա հրով այրեսջիք։" Եւ մի՛ պագա-
նիցէք երկիր աստուածոց օտարաց. զի
[4]Տէր Աստուած՝ անուն նախանձելի է",
15 Աստուած նախանձոտ է։ Գուցէ դնիցեն
ուխտ ընդ բնակիչս երկրին, եւ պոռ-
նկեսցին զհետ դից նոցա, եւ զոհեսցեն աս-
տուածոց նոցա, եւ կոչեսցեն զքեզ, եւ
16 ուտիցես ի զոհից նոցա։ Եւ առնուցուս
ի դստերաց նոցա ուստերաց քոց, եւ
[5]ի դստերաց քոց տացես ուստերաց նո-
ցա, եւ պոռնկեսցին դստերք քո զհետ
նոցա", եւ պոռնկեցուցանիցեն զուստերս
17 քո զհետ դիցն իւրեանց։ Եւ աստուածս
ձուլածոյս մի՛ առնիցես քեզ։
18 Զտօն բաղարջակերաց պահեսցես.
զեւթն օր բաղարջ կերիցես, որպէս
պատուիրեցի քեզ, ի ժամանակի իւ-
րում յամսեանն կանխոց. զի յամսեանն
կանխոց ելեր յԵգիպտոսէ։

19 Ամենայն [2]արու որ բանայ զարգանդ՝
ինձ լիցի, եւ ամենայն արուք անասնոց քո,
անդրանիկն արջառոյ եւ անդրանիկն ոչ-
20 խարի։ Եւ զանդրանիկն իշոյ փրկեսցես
զառամբ. ապա թէ ոչ փրկեսցես զնա,
[6]զգինս նորա տացես"։ Զամենայն անդ-
րանիկս որդւոց քոց փրկեսցես. եւ ձեռն-
ունայն առաջի իմ մի՛ երեւեսցին։
21 Զվեց օր գործեսցես, եւ յաւուրն
եւթներորդի հանգիցես. ի սերմանս եւ
ի հունձս հանգիցես։
22 Եւ տօն եւթներորդաց արասցես [7]ինձ ի
սկզբան հնձոց ցորենոյ, եւ զտօն արմը-
տեաց ամփոփելոյ՝ [8]յընդմիջել տարւոյն։
23 Երիս ժամանակս ի տարւոջ երեւեսցի
ամենայն արու մանուկ քո առաջի Տեառն
24 Աստուծոյ Իսրայելի։ Քանզի մերժեցից
զազգսն յերեսաց քոց. եւ ընդարձակե-
ցից զսահմանս քո, եւ ոչ ոք իցէ որ
ակն դնիցէ երկրին քում, յորժամ ելա-
նիցես երեւել առաջի Տեառն Աստուծոյ
քո երիս ժամանակս ի տարւոջ։
25 Մի՛ զենուցուս ի վերայ խմորելոյ
զարիւն զոհից իմոց, եւ մի՛ ագանիցէ
26 յայգ զենումն տօնի զատկի։ Զառաջին
արմտիս երկրի քո տարցիս ի տուն
Տեառն Աստուծոյ քո։
Մի՛ եփեսցես [9]զգառն ի կաթն մօր իւրոյ։
27 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Գրեա դու քեզ
զպատգամս զայսոսիկ. զի այսու բանիւ
28 դնիցեմ ուխտ ընդ քեզ եւ ընդ [10]իս։ Եւ
էր Մովսէս առաջի Տեառն զքառասուն
տիւ եւ զքառասուն գիշեր. հաց ոչ եկեր եւ
ջուր ոչ արբ. եւ գրեաց ի վերայ տախտա-
կացն զբանս ուխտի զտասն պատգամացն։
29 Մինչդեռ իջանէր Մովսէս ի լեռնէն
Սինեայ, եւ երկոքին տախտակքն ուխտի
ի ձեռս Մովսիսի էին, եւ յիջանել ի-
րում ի լեռնէ անտի՝ ոչ գիտէր Մովսէս
եթէ [11]փառաւորեալ իցէ տեսիլ գունոյ"
երեսաց նորա ի խօսել նորա ընդ նմա։
30 Եւ ետես Ահարոն եւ ամենայն որդիքն
Իսրայելի զՄովսէս, եւ [12]էր փառաւորեալ
տեսիլ գունոյ" երեսաց նորա, եւ երկեան
31 մերձենալ ի նա։ Եւ կոչեաց զնոսա Մով-
սէս, եւ դարձան առ նա Ահարոն եւ
ամենայն իշխանք ժողովրդեանն, եւ խօ-
32 սեցաւ Մովսէս ընդ նոսա։ Եւ ապա մերձե-
ցան առ նա ամենայն որդիքն Իսրայելի.

[1]Եբր. և խոնարհեցաւ յերկիր և երկիր [2]Յեբր. [illegible] [3]Եբր. Աշերա, [illegible] [4]Եբր. Տէր, Նախանձոտ անուն նորա [5]Եբր. պոռնկիցին դստերք նոցա զհետ դից իւրեանց

[6]Եբր. փողոտեսցես զնա [7]Եբր. քեզ [8]Եբր. ի կատարածի [9]Եբր. զուլ [10]Եբր. Իսրայելի [11]Եբր. փայլէր մորթ [12]Եբր. ահա փայլէր մորթ

եւ պատմեաց նոցա զամենայն զոր խօ-
սեցաւ ընդ նմա Տէր ի լերինն Սինեայ։
33 [1]Եւ իբրեւ դադարեաց ի խօսելոյ անտի
ընդ նոսա, արկ՝՝ պատրուակ զերեսօք
34 իւրովք։ Իբրեւ մտանէր Մովսէս առաջի
Տեառն խօսել ընդ նմա, մերկանայր
զպատրուակն մինչեւ անդրէն ելանելոյ.
եւ իբրեւ ելանէր, խօսէր ընդ ամենայն
որդւոցն Իսրայելի զոր միանգամ պատ-
35 ուիրեաց նմա Տէր։ Եւ տեսին որդիքն
Իսրայելի զերեսն Մովսիսի զի [2]փառա-
ւորեալ էր տեսիլ գունոյ՝՝ երեսաց նորա.
եւ արկանէր Մովսէս պատրուակ ի վե-
րայ երեսաց իւրոց, մինչեւ անդրէն մտա-
նելոյ եւ խօսելոյ ընդ նմա։

## Գլ. ԼԵ

1 Եւ ժողովեաց Մովսէս զամենայն ժողո-
վուրդ որդւոցն Իսրայելի եւ ասէ ցնոսա,
Այս բանք են զոր ասաց Տէր առնել
2 զնոսա։ Զվեց օր գործեսցես զգործ, յա-
ւուրն եւթներորդի [3]հանգիցես. շաբաթ
սուրբ է, հանգիստ՝՝ Տեառն. ամենայն
3 որ գործեսցէ ի նմա, սատակեսցի. Մի՛
լուցցի հուր յամենայն բնակութեան ձե-
րում յաւուր շաբաթուց. [4]զի ես եմ Տէր։՝՝
4 Եւ խօսեցաւ Մովսէս ընդ ամենայն
ժողովրդեան որդւոցն Իսրայելի եւ ասէ,
Այս պատգամ է զոր պատուիրեաց Տէր
5 եւ ասէ, Առէք ի ձէնջ հաս Տեառն. ա-
մենայն ոք զիարդ եւ յօժարեսցէ ի սրտի
իւրում, բերցեն պտուղ Տեառն, ոսկի
6 եւ արծաթ, պղինձ, Եւ կապուտակ եւ
ծիրանի եւ կարմիր կրկին մանեալ եւ
7 բեհեզ նիւթեալ եւ մազ այծեաց, Եւ մորթ
խոյոց կարմիր ներկեալ, եւ մորթս [5]կա-
8 պուտակեալս, եւ փայտս անփուտս, Եւ
եւղ լուսոյ, եւ խունկս իւղոյ օծման,
9 եւ խունկս հանդերձանաց, Եւ ականս
սարդիոնս [4]եւ ականս զմրուխտս՝՝ եւ ա-
կանս ի դիր վակասին, եւ [6]զպճղնաւորն։
10 Եւ ամենայն որ իմաստուն իցէ սրտիւ
ի ձեզ, եկեալ գործեսցէ զամենայն ինչ
11 զոր պատուիրեաց Տէր. Զխորանն, եւ
զնուարտանս իւր, եւ զվիժակս նորա,
եւ [7]զգահակս նորա, եւ զտախտակս
նորա, եւ զպարզունակս նորա, եւ զսիւ-
12 նակս նորա, եւ զխարիսխս նորա, Եւ
զտապանակն [4]վկայութեան եւ զլծակս
նորա, եւ զքաւութիւնն եւ [8]զվարա-
գոյրն, զառագաստ սրահին եւ զսիւ-
նակս նորա, եւ զականսն զմրուխտս, եւ
13 զխունկսն եւ զեւղն օծման՝՝, Եւ զսեղանն,
[4]եւ զամենայն զկահ նորա եւ զհովանոցս
սեղանոյն՝՝ եւ զլծակս նորա եւ զամենայն
14 զկահ նորա, եւ զհացն երեսաց, Եւ զաշ-
տանակն լուսոյ եւ զամենայն զկահ նո-
րա, եւ զճրագարանս նորա եւ զեւղն
15 լուսոյ, Եւ զսեղանն խնկոց, եւ զլծակս
նորա, եւ զեւղն օծութեան, եւ զխունկսն
հանդերձանաց, եւ զվարագոյր դրան խո-
16 րանին, Եւ զսեղանն ողջակիզաց, եւ
զվանդակս նորա պղնձիս, զլծակս նո-
րա եւ զամենայն զկահ նորա, եւ զա-
17 ւազանն եւ զխարիսխս նորա, Եւ զա-
ռագաստ [9]սրահին եւ զսիւնակս նորա
եւ զխարիսխս նորա, եւ զարահակ դրան
18 [9]սրահին, Եւ զցիցս խորանին եւ զցիցս
19 [9]սրահին եւ զպարանս նոցա, Եւ զպատ-
մուճանն որով պաշտիցեն ի սրբու-
թեանն, եւ զպատմուճանս սուրբս Ա-
հարոնի քահանայի, եւ զպատմուճանս
քահանայութեան որդւոցն Ահարոնի։
20 Եւ ել ամենայն ժողովուրդ որդւոցն
21 Իսրայելի առ ի Մովսիսէ։ Եւ բերին իւ-
րաքանչիւր որպէս եւ յօժարէին սիրտք
իւրեանց, եւ որոց զիարդ եւ կամ եղեւ
անձանց իւրեանց, բերէին նուէրս Տեառն
յամենայն գործս խորանին վկայութեան,
եւ յամենայն նիւթս նորա, եւ յամենայն
22 պատմուճանս սրբութեանն։ Եւ [10]բերին
արք ի կանանց, ամենայն ոք որպէս եւ
միտք իւր վարէին, ականս եւ՝՝ զինդս
եւ մատանիս եւ ծամակալս եւ կչտա-
պանակս, եւ զամենայն անօթս ոսկե-
ղէնս. եւ ամենայն արք որ [4]եւ էին՝՝ բե-
23 րէին նուէրս ոսկւոյ Տեառն։ Եւ ամե-
նայն այր առ որում գտանէր կապուտակ
եւ ծիրանի եւ կարմիր մանեալ եւ բե-
հեզ, եւ մազ այծեաց եւ մորթս խոյոց
կարմիր ներկեալ եւ մորթս [5]կապու-
24 տակեալս, բերէին։ Ամենայն որ նուի-
րէր նուէրս, արծաթ եւ պղինձ բերէին
զնուէրսն Տեառն, եւ ամենայն առ որում
գտանէր փայտ անփուտ յամենայն գործ

---

[1] Կամ, մինչեւ ի դադարել Մովսիսի ի խօսելոյ ընդ նոսա, արկանէր [2] Եբր. փայլէր մորթ [3] Եբր. եղիցի ձեզ սրբութիւն, շաբաթ հանգստեան [4] Յեբր. պակաս [5] Եբր. թեհաշի [6] Եբր. տախտակին (կրծանոց) [7] Կամ, զձարմանդս

[8] Եբր. զվարագոյրն որ ծածկէ [9] Եբր. գաւթին [10] Եբր. եկին արք հանդերձ կանամբք, իւրաքանչիւր յօժարութեամբ ի սրտէ, և բերին

25 կանին՝ բերէին։ Եւ ամենայն կին իմաս-
տուն մտօք նիւթէր ձեռօք իւրովք, եւ
բերէր մանեալ զկապուտակն եւ զծի-
րանին եւ զկարմիրն նրբեալ եւ զբեհեզն։
26 Եւ ամենայն կանայք որ յօժարէին ի
միտս իւրեանց՝ մանէին իմաստութեամբ
27 զմազ այծեայն։ Եւ իշխանքն բերէին
ականս զմրուխտս, եւ ականս ի նիւթ
28 վակասին եւ տախտակին, Եւ [1]զհան-
դերձանս խնկոցն, եւ զիւղն յուսոյ եւ
29 զիւղն օծութեան"։ Եւ ամենայն այր եւ
կին, որոց յօժարէին միտք իւրեանց, մտա-
նէին գործել զամենայն գործն զոր պատու-
իրեաց Տէր գործել ի ձեռն Մովսիսի. բե-
րէին որդիքն Իսրայելի զնուէրսն Տեառն։
30 Եւ ասէ Մովսէս ցորդիսն Իսրայելի,
Տեսէք, զի կոչեաց Աստուած յանուանէ
զԲեսելիէլ զՈւրիեան զորդի Ովրայ յազգէ
31 Յուդայ. Եւ ելից զնա աստուածեղէն
Հոգւով իմաստութեան, եւ հանճարով եւ
32 գիտութեամբ յամենայնի, Ըստ ամենայն
գործոյ ճարտարապետել ճարտարապե-
տութեամբ, գործել զոսկին եւ զարծաթն
33 եւ զպղինձ. Եւ քանդակել զականսն, եւ
գործել զփայտն, առնել զամենայն գործ
34 իմաստութեան, Եւ [2]խելամտել, զի" ետ
ի սիրտ նորա զիմաստութիւն, եւ Եղի-
աբայ որդւոյ Աքիսամայ յազգէ Դանայ,
35 Ջերս ելից մտօք իմաստութեան, [3]խե-
լամտել՝ գործել զամենայն գործ [4]սրբու-
թեանն, զաստառնանկութեան եւ զնկա-
րու, կապուտակաւն եւ ծիրանեաւն եւ
կարմրովն նրբեալ եւ բեհեզով անկա-
նել գործել զամենայն գործ ճարտարու-
թեան նկարակերտաց։

ԳԼ. ԼԶ

1 Եւ արարին Բեսելիէլ եւ Եղիաբ եւ ա-
մենայն այր իմաստուն մտօք, որում
տուաւ ի Տեառնէ իմաստութիւն եւ գի-
տութիւն՝ խելամուտ լինել գործել զա-
մենայն գործ տարազու սրբութեանն,
ըստ ամենայնի որպէս եւ հրամայեաց Տէր։
2 Եւ կոչեաց Մովսէս զԲեսելիէլ եւ զԵղիաբ
եւ զամենեսին որ ունէին իմաստութիւն
ի սրտի, որոց ետ [5]Աստուած հանճար ի
սիրտս նոցա, զամենեսին որ կամակար
մտօք կամէին մերձենալ ի գործն եւ
3 կատարել։ Եւ առին ի Մովսիսէ զամե-
նայն նուէրսն զոր բերին որդիքն Իսրա-
յելի յամենայն գործ տարազու սրբու-
թեանն առնել զայն. եւ [6]նոքեանք եւս
ընդունէին զնուէրսն ի նուիրաբերացն"
ընդ առաւօտս առաւօտս։
4 Եւ գային ամենայն իմաստունք որ
գործէին զգործ սրբութեանն, իւրաքան-
չիւր ըստ տարազու իւրում զոր ինք-
5 եանք գործէին. Խօսեցան ընդ Մովսիսի
եւ ասեն, Կարի յաճախէ բերել ժողո-
վուրդդ քան զբաւական տարազու պի-
տոյից գործոյն, զոր հրամայեաց [5]Աս-
6 տուած առնել։ Եւ հրամայեաց Մովսէս
քարոզ կարդալ ի բանակին եւ ասել,
Այր կամ կին՝ մի եւս գործեսցեն ի
պտուղ սրբութեանն։ Եւ արգելաւ
7 ժողովուրդն ի բերելոյ։ Եւ [7]զգործեալն
իւրեանց բերէին" յամենայն կազմած
գործոյն գործել զայն, եւ [8]զաւելեցին։
8 Եւ գործէր ամենայն իմաստուն սրտիւ
ընդ գործաւորսն զգործ խորանին տասն
փեղկեան, ի բեհեզոյ մանելոյ եւ ի կա-
պուտակէ եւ ի ծիրանւոյ եւ ի կարմրոյ
կրկնելոյ, [9]քերոբ գործ անկուածոյ" գոր-
9 ծէին. Երկայնութիւն միոյ փեղկին ի
քսան եւ յութ կանգնոյ, եւ լայնութիւն
ի չորից կանգնոյ միոյ փեղկի. չափ նոյն
10 էր ամենեցունց փեղկացն։ Եւ կցեալ զհինգ
փեղկսն ընդ [10]միւս հինգ փեղկից," եւ
զհինգն եւս փեղկս կցեալ ընդ [10]այլոց
11 հնգից"։ Եւ արար ճարմանդս կապուտակ-
եայս առ եզերբ միոյ փեղկին ի կողմանէ
առ ի խառնուածս. նոյնպէս արար եւ
առ եզերբ արտաքնոյ փեղկին երկրորդի
12 խառնուածոյն։ Յիսուն ճարմանդ արար
միոյ փեղկի, եւ յիսուն ճարմանդ արար
ի կողմանէ փեղկին ըստ երկրորդի խառ-
նուածոյն, առ ի խառնելոյ իւրաքանչիւր
13 ճարմանդացն ընդ միմեանս։ Եւ արար օղս
ոսկիս յիսուն, եւ խառնեաց զփեղկսն ընդ
միմեանս օղիւքն, եւ եղեւ խորան մի։
14 Եւ արար փեղկս մազեղէնս ծածկիչս
խորանին. մետասան փեղկ արար զնոսա։
15 Երկայնութիւն միոյ փեղկի յերեսուն
կանգնոյ, եւ լայնութիւն միոյ փեղկի ի
չորից կանգնոց. չափ նոյն էր մետա-

[1]Եբր. համեմունս և եւղս ի լոյս և յեւղ օծու-
թեան և ի խունկս անուշունս [2]Եբր. առ ի
խելամուտ առնելոյ [3]Եբր. զոլեալ [4]Եբր.
ճարտարութեան քանդակագործաց [5]Եբր. Տէր

[6]Եբր. նոքա տակաւին բերէին առ նա նուէրս
[7]Եբր. նիւթն եղեւ բաւական [8]Եբր. աւելի եւս
[9]Եբր. քերոբէս՝ գործ ճարտարութեան [10]Եբր.
միմեանս

7

16 սանեցունց փեղկիցն ։ Եւ կցեաց զհինգ
փեղկսն ի միասին եւ զվեց փեղկսն ի մի-
17 ասին ։ Եւ արար յխուն ճարմանդս առ
եզերբ փեղկին, որ ի մէջ խառնուա-
ծոցն. եւ արար յխուն եւս ճարմանդս առ
եզերբ փեղկին երկրորդի խառնուածոյն։
18 Եւ արար օղս պղնձիս յխուն. եւ կցեաց
19 զխորանն զի լինիցի մի ։ Եւ արար զվի-
ժակս խորանին ի մորթոց խոյոց կար-
միր ներկելոց, եւ զպատախուրակսն [1]ի
կապուտակէ ի վերոյ կողմանէ ։
20 Եւ արար [2]զերկուս սիւնս՟ խորանին
21 յանփուտ փայտից կանգնաւորս ։ Ի տասն
կանգնոյ զերկայնութիւն միոյ սեան, եւ
ի կանգնոյ եւ ի կիսոյ [3]զթանձրութիւն
22 եւ՟ զլայնութիւն միոյ սեան ։ Եւ երկուս
[4]ափոփչս առ մի մի սիւն խառնեալ ընդ
միմեանս. նոյնպէս արար ամենայն սեանց
23 խորանին ։ Եւ արար զսիւնս խորանին.
24 քսան սիւն՝ ի հարաւոյ կողմանէ ։ Եւ
քառասուն խարիսխ արծաթի՝ սեանցն
քսանեցունց. երկուս խարիսխս առ մի
սիւն յերկոցունց կողմանց, եւ երկուս
խարիսխս առ միւս եւս սիւն յերկոցունց
25 կողմանց ։ Եւ յերկրորդ կողման խորա-
26 նին ընդ հիւսիսի արար քսան սիւն, Եւ
քառասուն խարիսխ արծաթի, երկուս
խարիսխս առ մի սիւն, եւ երկուս խա-
27 րիսխս առ միւս եւս սիւն ։ Եւ ի թի-
կանց խորանին ընդ [5]ծովակողմն արար
28 վեց սիւն. Եւ երկուս սիւնս արար յան-
29 կիւնս խորանին յետուստ կողմանէ ։ Եւ
էին [6]հաւասարք ի ներքուստ, եւ ըստ
նմին օրինակի [7]հաւասարք էին՟ ի գլխոյ
կողմանէ ի մի խառնուած. նոյնպէս ա-
րար եւ երկոցունց սեանցն որ [8]յան-
30 կիւնսն ։ Եւ էին ութ սիւն, եւ խարիսխք
նոցա արծաթիք, վեշտասան խարիսխ.
երկու խարիսխք առ մի սիւն, եւ եր-
31 կու խարիսխք առ մի սիւն ։ Եւ արար
պարզունակս յանփուտ փայտից, հինգ
առ մի սիւն ի միոջէ կողմանէ խորա-
32 նին, Եւ հինգ եւս պարզունակ առ միւս
սիւն՝ յերկրորդ կողմանէ խորանին, եւ
հինգ պարզունակ առ միւս սիւն ի թի-
33 կանց խորանին ընդ [5]ծովակողմն։ Եւ ա-
րար զմիջին պարզունակն թափանցանց
34 ի մէջ սեանցն ի կողմանէ ի կողմն ։ Եւ
[9]զերկուս սիւնսն՟ պատեաց ոսկւով.
եւ [10]զերկուս օղամանեակս՟ նոցա արար
ոսկիս, յորս մտանիցեն պարզունակքն.
եւ պատեաց զպարզունակսն ոսկւով ։
35 Եւ արար վարագոյր ի կապուտակէ եւ
ի ծիրանւոյ եւ ի կարմրոյ մանելոյ եւ ի
բեհեզոյ նիւթելոյ. գործ [11]անկուածոյ
36 գործեաց զնա [12]քերոբ։ Եւ եդ զայն ի վե-
րայ չորից սեանցն յանփուտ փայտից ոս-
կիապատաց. եւ խոյակք՟ նոցա ոսկիք, եւ
37 չորք խարիսխք նոցա արծաթիք ։ Եւ ա-
րար զվարագոյր դրան խորանին վկա-
յութեան ի կապուտակէ եւ ի ծիրանւոյ
եւ ի կարմրոյ մանելոյ եւ ի բեհեզոյ նիւ-
38 թելոյ, գործ անկուածոյ [13]քերոբ. Եւ
զսիւնս նոցա հինգ եւ զօղս նոցուն. եւ
պատեաց զխոյակս [14]նոցա ոսկւով. եւ
խարիսխք նոցա պղնձիք հինգ ։

## Գլ. ԼԷ

1 Եւ արար Բեսելիէլ զտապանակն յան-
փուտ փայտից, յերկուց կանգնոց եւ ի
կիսոյ զերկայնութիւն նորա, եւ ի կանգ-
նոյ եւ ի կիսոյ զլայնութիւն նորա, եւ ի
կանգնոյ եւ ի կիսոյ զբարձրութիւն նորա։
2 Եւ պատեաց զնա ոսկւով սրբով ներքոյ
եւ արտաքոյ, եւ արար նմա ծնօտս ոսկիս
3 շուրջանակի։ Եւ ձուլեաց նմա չորս օղա-
մանեակս ոսկիս ի չորեցունց կողմանց
նորա, երկուս օղամանեակս ի միոջէ
կողմանէ, եւ երկուս օղամանեակս ի
միւսմէ կողմանէ, [3]եւ ագոյց լծակացն՟
4 Եւ արար լծակս յանփուտ փայտից, եւ
5 պատեաց զնոսա ոսկւով ։ Եւ [15]ագուցին
զլծակսն յօղամանեակսն ի կողմանց տա-
պանակին, բառնալ զնա նոքօք ։
6 Եւ [16]արարին զքաւութիւնն ի վերուստ
տապանակին՟ յոսկւոյ սրբոյ, յերկուց
կանգնոց եւ ի կիսոյ զերկայնութիւն
նորա, եւ ի կանգնոյ եւ ի կիսոյ զլայ-
7 նութիւն նորա ։ Եւ արար երկուս քե-
րոբէս ոսկիս. [17]ճախարակեայս գործ-
եաց զնոսա՝ յերկուց կողմանց քաւու-
8 թեանն. Քերոբ մի ի վերայ միոյ գլխոյ
քաւութեանն, եւ քերոբ մի ի վերայ
երկրորդի գլխոյ քաւութեանն, անդատին
ի քաւութենէ անտի արար զերկոսին

[1] Եբր. ի մորթոց թեհաշի [2] Եբր. տախտակս, ([illegible]) [3] Յեբր. [illegible] [4] Եբր. ձեռս, [illegible] ագոյցս [5] Կամ, արեւմուտս [6] Եբր. զոյգ [7] Եբր. կցեին [8] Եբր. յերկոսին անկիւնսն

[9] Եբր. զատախտակսն [10] Եբր. զօղամանեակս [11] Եբր. ճարտարութեան [12] Եբր. քերոբէից ։ (36) Եւ արար նմա սիւնս չորս յանփուտ փայտից ոսկիապատս. և ճարմանդք [13] Եբր. նկարակերպ [14] Եբր. նոցա և զգօտիս նոցա [15] Եբր. ագոյց [16] Եբր. արար զքաւութիւնն [17] Կամ, կռածոյս

9 քերովբէն, յերկոցունց ծայրից նորա։ Եւ
էր քերովբէիցն տարածեալ զթեւս իւր-
եանց ի վերուստ, եւ հովանի ունէին
թեւօք իւրեանց ի վերայ քաւութեանն.
եւ երեսք քերովբէիցն հանդէպ միմեանց
ի վերայ քաւութեանն։
10 Եւ արար զսեղանն [1]զառաջաւոր յան-
կեայ սրբոյ. եւ ձուլեաց նմա չորս օղա-
մանեակս ոսկիս, երկուս ի միջէ կող-
մանէ, եւ երկուս յերկրորդ կողմանէ. եւ
ադոյցս, բառնալ զնա ադուցիւքն։ Եւ
զադոյցս տապանակին եւ զսեղանոյն ա-
րար՝՝ յանփուտ փայտից, [1]եւ պատեաց
զնոսա ոսկւով." յերկուց կանգնոց զեր-
կայնութիւն նորա, եւ ի կանգնոյ եւ ի
կիսոյ զլայնութիւն նորա, եւ ի կանգնոյ
11 եւ ի կիսոյ զբարձրութիւն նորա։ Եւ
պատեաց զնա ոսկւով սրբով. եւ արար
12 նմա ծնօտս ոսկիս չուրջանակի։ Եւ արար
նմին պսակ ուղկեան չուրջանակի, եւ
արար ծնօտս ոսկիս պսակին նորա չուր-
13 ջանակի։ Եւ արար նմա չորս օղամանե-
եակս ոսկիս. եւ եդ զօղամանեակսն ի
չորս կողմանս որ էին չորեցունց ոտից
14 նորա։ Ի ներքոյ պսակին եղեն օղա-
մանեակքն ադոյցք լծակացն առ ի բառ-
15 նալոյ զսեղանն։ Եւ արար երկուս լծակս
յանփուտ փայտից, եւ պատեաց զնոսա
16 ոսկւով առ ի բառնալոյ զսեղանն։ Եւ
արար զկահ [2]սեղանոյն եւ զփնկալացս
նորա եւ զարբենակալս նորա" եւ զճա-
շակս նորա եւ զնուիրանացն որովք նուի-
րիցեն՝ յոսկւոյ սրբոյ։
17 Եւ արար զաշտանակն [3]լուսոյ ձոյլ
ոսկի", [1]զբունն, եւ զտերեւսն յերկու-
ցունց կողմանց նորա. եւ ի տերեւանցն
շառաւիղք ընթերեալք առ միմեանս՝ երեք
ի միջէն եւ երեք ի միւսմէն՝ հաւասարք
միմեանց. եւ զլուսակալս նոցա որ էին
ի ծայրն ընկուզազարդս անդստին ընտ-
րեալս։ Եւ զբաղմակալն ի նոսա, զի
լիցեն ճրագարանքն ի վերայ նոցա. եւ
զբաղմակալն զեւթներորդ՝ որ ի գլուխ
լուսակալին, որ ի վերայ բուն իսկ գլխոյն
ի վերուստ, ձոյլ համակ ոսկի։ Եւ զեւթն
ճրագարանսն որ ի վերայ նորա ոսկիս,
եւ զունելիս նորա ոսկիս, եւ զպարգա-
րիչս նորա ոսկիս յոսկւոյ սրբոյ." [4]ձախա-
րակեայ գործեաց զաշտանակն, զբունն
եւ զտերեւսն նորա, եւ զսկահա-
ձեւսն եւ զգնդակսն եւ զշուշանս նորա
18 անդստին ի նմանէ։ Վեց ոստքն արձա-
կեալ ի կողմանց նորա, երեք ոստեղունք
ի միջէ կողմանէ աշտանակին, եւ երեք
ոստեղունք յերկրորդ կողմանէ աշտանա-
19 կին. Երեք սկահաձեւք ընկուզազարդք
յօրինեալք ի միում ոստեղն, եւ գնդակ
եւ շուշան. եւ երեք սկահաձեւք ընկու-
զազարդք յօրինեալք ի միում եւս ոստե-
ղան, եւ գնդակ եւ շուշան. այսպէս վե-
ցեցունց ոստեղանցն արձակելոց յաշտանա-
20 կէ անտի։ Եւ ի բուն աշտանակին չորք
սկահաձեւք ընկուզազարդք յօրինեալք,
21 եւ գնդակք նորին եւ շուշանք։ Եւ գնդակ
մի ընդ երկուք ստեղամբքն անդստին ի
նմին, [5]վեցեցունց ստեղանցն արձակելոց
22 ի նմանէ։ Գնդակք նոցա եւ ստեղունք
իւրեանց անդստին ի նմին, բոլորգակ
[4]ձախարակեալ ի միջէ՝ յոսկւոյ սրբոյ։
23 Եւ արար զճրագարանս նորա եւթն, եւ
զունելիս եւ զպարգարիչս նորա յոսկւոյ
24 սրբոյ։ Ի տաղանդէ միոյ ոսկւոյ սրբոյ
արար զնա եւ զամենայն զկահ նորա։
25 Եւ արար զսեղանն [6]ոսկեպատ յան-
փուտ փայտից, [7]ի հինգ կանգնոյ զեր-
կայնութիւն նորա եւ ի հինգ կանգնոյ
զլայնութիւն" նորա՝ չորեքկուսի, եւ [8]յե-
րից կանգնոց զբարձրութիւն նորա. եւ
26 զեղջերս նորա անդստին ի նմանէ։ Եւ
պատեաց զնա ոսկւով սրբով, եւ զյարկ
նորա եւ զկողմանս նորա չուրջանակի
եւ զեղջերս նորա. եւ արար նմա
27 ծնօտս ոսկիս չուրջանակի։ Եւ երկուս
օղամանեակս ոսկիս ընդ ծնօտիւք նորա
առ ի կողմանէ ընդ երկոքումբք կող-
մամբք նորա՝ յադոյցս լծակացն, առ ի
28 բառնալոյ զնա նոքօք։ Եւ արար զլծակսն
յանփուտ փայտից, եւ պատեաց զնոսա
29 ոսկւով։ Եւ արար զեւղն օծութեան
զսուրբ, եւ զհանդերձանս խնկոցն, գործ
մաքուր իւղագործաց։

ԳԼ. ԼԸ.

1 Եւ արար զսեղանն [9]պղնձապատ ի բու-
րուառացն պղնձեաց՝ որ էին ի ձեռս ա-
րանցն ապստամբաց հանդերձ ժողովրդ-

[1] Յեբր. զոլոաէ [2] Եբր. սեղանոյն, զսկուտեղս նորա և զխնկանոցս [3] Եբր. յոսկւոյ սրբոյ [4] Կամ, կռածոյ

[5] Եբր. եւ գնդակ մի ընդ երկուք ստեղամբքն անդստին ի նմանէ, եւ գնդակ մի ընդ երկուք ստեղամբքն անդստին ի նմանէ, վեցեցունց [6] Եբր. խնկոց [7] Եբր. կանգնաւ երկայնութիւն նորա, և կանգնաւ լայնութիւն [8] Եբր. յերկուց [9] Եբր. ողջակիզաց

եամբն Կորխայ ," յանփուտ փայտից . ի
հինգ կանգնոյ զերկայնութիւն նորա ,
եւ ի հինգ կանգնոյ զլայնութիւն նորա ,
չորեքկուսի , եւ յերից կանգնոց բարձ-
2 րութիւն նորա ։ Արար եւ զեղջերսն նո-
րա ի վերայ չորեցունց անկեանց իւրոց .
անդստին ի նմանէ էին եղջերքն նորա ,
3 եւ պատեաց զնոսա պղնձով ։ Եւ արար
զամենայն կահ սեղանոյն , [1]զխարիսխսն
եւ զըլչակն եւ զտաշտսն եւ զմսահանսն
եւ զբուրուառսն . եւ զամենայն կահ
4 նորա արար պղնձի ։ Եւ արար զպատա-
ւորակս սեղանոյն , գործ վանդակագործ
պղնձի [2]ի բուրուառացն , ի ներքուստ
5 մինչեւ ցմէջս ։ Եւ եդ նմա չորս օղա-
մանեակս պղնձիս ի չորեցունց կողմանց
զահաւորակի սեղանոյն՝ ապոյցս նգայն ։
6 Եւ արար զլծակսն յանփուտ փայտից, եւ
7 պատեաց զնոսա պղնձով ։ Եւ ագուցին
զլծակսն յօղամանեակսն ի կողմանս սե-
ղանոյն , բառնալ զսեղանն նոքօք . [3]րո-
վանդակ տախտակամած գործեաց զնա ։
8 Եւ արար զաւազանն պղնձի եւ զխա-
րիսխն նորա պղնձի՝ ի հայելեաց կա-
նանց ուխտաւորաց , որք [4]պահեցին
պահս" առ դրան խորանին վկայութեան՝
[2]յաւուր յորում եհար զխորանն" ։
9 Եւ արար [5]զսրահն որ հայէր ընդ հա-
րաւ . եւ" զառագաստ [6]սրահին ի բեհեզոյ
10 մանկոյ հարեւր [7]առ հարեւր". Եւ սիւնք
նոցա քսան , եւ խարիսխք նոցա պղնձիք
քսան . եւ [8]զարդք սեանցն եւ [9]խոյակք
11 նոցա արծաթիք ։ Եւ ընդ կողմն հիւսի-
սոյ հարեւր [7]առ հարեւր", եւ սիւնք նո-
ցա քսան , եւ խարիսխք նոցա պղնձիք
քսան . եւ [8]զարդք սեանցն եւ [9]գրուագք
12 նոցա արծաթիք ։ Եւ [10]ընդ ծովակողմն
սրահ" ի յիսուն կանգնոյ . եւ սիւնք
նոցա տասն , եւ խարիսխք նոցա տասն.
եւ [8]զարդք սեանցն եւ [9]գրուագք նոցա
13 արծաթիք ։ Եւ ընդ կողմն արեւելից ի յի-
14 սուն կանգնոյ ։ Եւ առագաստքն ի հնգե-
տասան կանգնոյ [11]ի թիկանց , եւ սիւնք
նոցա երեք , եւ խարիսխք նոցա երեք .
15 Եւ յերկրորդ [12]թիկունսն առ դրամբ սրա-
հին , սրահք" ի հնգետասան կանգնոյ, եւ
սիւնք նոցա երեք , եւ խարիսխք նոցա
16 երեք ։ Ամենայն [13]սրահք խորանին" չուր-
17 ջանակի ի բեհեզոյ մանկոյ ։ Եւ խարիսխք
[14]նոցա պղնձիք , եւ [15]գրուագք սեանցն
եւ խոյօղք" նոցա արծաթիք , եւ խոյակք
նոցա արծաթապատք , եւ [16]սիւնքն ար-
ծաթապատք , ամենայն սիւնք սրահին" ։
18 Եւ պրահակք դրան [6]սրահին՝ գործ նկա-
րակերպ ի կապուտակէ եւ ի ծիրանւոյ
եւ ի կարմրոյ մանկոյ եւ ի բեհեզոյ նիւ-
թելոյ . ի քսան կանգնոյ երկայնութիւն,
եւ ի [17]հնգետասան կանգնոյ բարձրութիւն
եւ լայնութիւն՝ հաւասարակ ըստ առագաս-
19 տից [6]սրահին ։ Եւ սիւնք նոցա չորք , եւ
խարիսխք նոցա պղնձիք չորք, եւ [8]խոյօղք
նոցա արծաթիք, եւ խոյակք նոցա [18]ար-
20 ծաթապատք ։ Եւ ամենայն ցիցք [6]սրա-
հին եւ խորանին չուրջանակի պղնձիք ։
21 Եւ այս էր [19]պայման խորանին վկա-
յութեան , [20]որպէս հրաման ետ Մով-
սէսի կազմել զպաշտօնն" Ղեւտացւոցն ի
ձեռն Իթամարայ որդւոյ Ահարոնի քա-
22 հանայի ։ Եւ Բեսելիէլ Ուրիեան որդի
Ովրայ յազգէ Յուդայ արար որպէս հրա-
23 ման ետ Տէր Մովսէսի ։ Եւ ապա Եղիաբ
Աքիսամայ յազգէ Դանայ , որ ճարտա-
րապետէր զոստայնանկութիւն եւ զասղ-
նագործութիւն եւ զնկարակերտութիւն ,
ի կապուտակէ եւ ի ծիրանւոյ եւ ի կար-
մրոյ մանկոյ եւ ի բեհեզոյ նիւթելոյ ։
24 Ամենայն ոսկւոյն որ գործեցաւ ի գործն,
ըստ ամենայն գործոյ սրբութեանցն, եղեւ
կշիռ ոսկւոյ նուիրացն քսան եւ ինն տա-
ղանդ , եւ եւթն հարեւր եւ երեսուն
25 սիկղ՝ ըստ սրբութեան սիկեղն ։ Եւ արծա-
թոյ նուէրք , յանցելոց արանց ժողովըր-
դեանն ի համարս , հարեւր տաղանդ , եւ
հազար եւ եւթն հարեւր եւ եւթանասուն
եւ հինգ սիկղ՝ ըստ սրբութեան սիկեղն ։
26 Դրամ մի առ գլուխ , կէս սիկեղ ըստ
սրբութեան սիկեղն , ամենայն որ անցա-
նէր ի համարս անդ ի քսանամենից եւ ի
վեր , վեց հարեւր հազար եւ երեք հա-
27 զարք եւ հինգ հարեւր եւ յիսուն ։ Եւ
եղեւ հարեւր տաղանդ արծաթոյ ի ձոյլ

[1]Եբր. զանօթս մոխրոյ [2]3Եբր. պղնձէ [3]Եբր. սնամէջ [4]Եբր. պաշտէին, կամ, ժողովէին [5]Եբր. զգաւիթն. ի հարաւ կոյս [6]Եբր. գաւթին [7]Եբր. կանգուն [8]Եբր. ճարմանդք [9]Եբր. գօտիք [10]Եբր. ընդ արեւմուտս առագաստք [11]Եբր. միոյ կողման դրանն [12]Եբր. կողման առ դրամբ գաւթին առագաստք

[13]Եբր. առագաստք գաւթին [14]Եբր. սեանցն [15]Եբր. ճարմանդք սեանցն և գօտիք [16]Եբր. գօտիք ամենայն սեանց գաւթին արծաթիք [17]Եբր. հինգ [18]Եբր. արծաթապատք , եւ գօտիք նոցա արծաթիք [19]Եբր. համար խորանին՝ [20]Եբր. որ համարեցաւ ըստ բերանոյ Մովսեսի ի պաշտ

[1]հարիւր խոյակաց խորանին, եւ ի խո-
յակս վարագուրին. հարիւր տաղանդ ի
հարիւր խոյակ, տաղանդ մի առ խոյակ՝՝։
28 Եւ զհազար եւ զեւթն հարիւր եւ զեւ-
թանասուն եւ հինգ սիկղն գործեաց ի
խոյօղս սեանցն, եւ պատեաց [2]ոսկւով
զխոյակս նոցա, եւ [3]զարդարեաց զնոսա։
29 Եւ պղինձ նուիրացն եւթանասուն տա-
ղանդ, եւ երկու հազար եւ չորեք հա-
30 րեւր սիկղ։ Եւ արար անտի զխարիսխս
դրան խորանին վկայութեան, եւ զսե-
ղանն պղնձի, եւ զպահարանակ սեղա-
նոյն պղնձի, եւ զամենայն զսպաս սե-
31 ղանոյն, Եւ զխարիսխս [4]սրահին չուրջա-
նակի, եւ զխարիսխս դրան [4]սրահին, եւ
զամենայն զցիցս խորանին, եւ զամե-
նայն զցիցս [5]սրահին չուրջանակի. եւ
զապարումն ի կապուտակէ եւ ի ծի-
րանւոյ եւ ի կարմրոյ մանելոյ՝՝։

ԳԼ. ԼԹ

1 Եւ [6]արար սպասուճանս պաշտամանն,
պաշտել նովօք ի սրբութեանն. եւ [7]ա-
րար պատմուճանս սրբութեանցն որ լինէր
Ահարոնի [2]քահանայի, որպէս հրամա-
յեաց Տէր Մովսէսի։
2 Եւ արարին զվակասն յոսկւոյ եւ ի
կապուտակէ եւ ի ծիրանւոյ եւ ի կար-
մրոյ մանելոյ եւ ի բեհեզոյ նիւթելոյ։
3 Եւ հատանէին զթիթղունս ոսկւոյն թելս
թելս՝ անկանել ընդ կապուտակին եւ
ընդ ծիրանւոյն եւ ընդ կարմրոյ մանե-
4 լոյ եւ ընդ բեհեզոյ նիւթելոյ։ [8]Գործ
անկուածոյ վակասի գործեցին զնա՝՝,
խառնեալ յերկոցունց կողմանց ընդ մի-
մեանս [2]հիւսկէն. գործ անկուածոյ ի մի-
5 մեանս ի նոյն՝՝։ Եւ ի նմանէ գործեցին
[9]ըստ իւրում գործուածոյ, յոսկւոյ եւ ի
կապուտակէ եւ ի ծիրանւոյ եւ ի կար-
մրոյ մանելոյ եւ ի բեհեզոյ նիւթելոյ.
որպէս եւ հրամայեաց Տէր Մովսէսի։
6 Եւ [10]գործեաց զերկոսին ականսն զմ-
րուխտ՝ ժապաւինեալս եւ՝՝ ընդելու-
զեալս ոսկւով, քանդակեալս [2]եւ մա-
ծուցեալս՝՝ ի քանդակ կնքոյ, յանուանց
7 որդւոցն Իսրայելի։ Եւ հաստատեաց
զնոսա ի վերայ ուսոց վակասին, ականս
յիշատակի որդւոցն Իսրայելի, որպէս
եւ հրամայեաց Տէր Մովսէսի։
8 Եւ արար զտախտակն գործ [11]անկուա-
ծոյ նկարակերպ՝՝ ըստ գործոյ վակասին,
յոսկւոյ եւ ի կապուտակէ եւ ի ծիրանւոյ
եւ ի կարմրոյ մանելոյ եւ ի բեհեզոյ
9 նիւթելոյ. Չորեքկուսի եւ կրկին գոր-
ծեաց զտախտակն. թզաւ յերկայնու-
10 թիւն եւ թզաւ ի լայնութիւն. Եւ ան-
կանէր ընդ նմին անկուած ականակապ
չորեքկարգեան ականց. կարգն առաջին՝
սարդիոն եւ տպազիոն եւ զմրուխտ,
11 կարգ մի. Եւ կարգն երկրորդ՝ կարկե-
12 հան եւ շափիղա եւ յասպիս. Եւ կարգն
երրորդ՝ ուատակ եւ գոճազմ եւ ակատ.
13 Եւ կարգն չորրորդ՝ ոսկեակն եւ եղունգն
եւ բիւրեղ. պատեալ եւ ընդելուզեալ
14 ոսկւով։ Եւ ականքն ըստ անուանց որդ-
ւոցն Իսրայելի էին. երկոտասանք յան-
ուանց նոցա գրեալք եւ քանդակեալք,
ըստ իւրաքանչիւր անուանց ազգացն եր-
15 կոտասանից։ Եւ արարին ընդ տախ-
տակաւն վերջս փողփողեալս ի վերայ
[2]երկուց օղոցն, գործ հիւսկէն յոսկւոյ
16 սրբոյ։ Եւ արարին երկուս վահանակս ոս-
կիս եւ երկուս օղս ոսկիս. եւ եդին զեր-
կուս օղսն ոսկիս յերկոսին առաջս տախ-
17 տակին։ Եւ եդին զվերջսն փողփողեալս
ի վերայ երկուց օղացն յերկոսին կող-
18 մանս տախտակին։ Եւ յերկոսին խառ-
նուածսն զերկուս վերջսն փողփողեալս
եդին ի վերայ երկուց վահանակացն. եւ
զնոսա եդին ի վերայ ուսոց վակասին
19 դէմ յանդիման յերեսաց կողմանէ։ Եւ
արարին երկուս օղս ոսկիս, եւ եդին ի
վերայ երկոցունց թեւոցն ի ծայրս տախ-
տակին, ի գլուխ թիկանց վակասին ի
20 ներքոյ կողմանէ։ Եւ արարին երկուս
օղս ոսկիս, եւ եդին ի վերայ երկոցունց
ուսոց վակասին ի ներքոյ կողմանէ յե-
րեսաց նորա՝ ըստ վերնոյ խառնուա-
21 ծոյ անկուածոյ վակասին։ Եւ պնդեցին
զտախտակն յօղից նորա մինչեւ ցօղս
վակասին, խառնեալ ընդ միմեանս ի
կապուտակէ, [12]հիւսեալս ընդ միմեանս
յանկուած՝՝ վակասին, զի մի՛ զերծանիցի
տախտակն ի վակասէ անտի, որպէս
հրամայեաց Տէր Մովսէսի։

[1] Ենբ· խարսխաց սրբութեանն և խարսխաց վարա-
գուրին. Հարիւր տաղանդ ի հարիւր խարիսխ,
տաղանդ մի առ խարիսխ [2] Ենբ· պղնձէ [3] Ենբ·
պնդեաց [4] Ենբ· գաւթին [5] Ենբ· գաւթին չուր-
ջանակի [6] Ենբ· ի կապուտակէ և ի ծիրանւոյ և
ի կարմրոյ մանելոյ արարին [7] Ենբ· արարին [8] Ենբ·
Վասուակս արարին նմա [9] Ենբ· զժապաւէնն որ
ի վերայ վակասին ըստ [10] Ենբ· գործեցին զա-
կանսն՝ եղնգնաքարինս

[11] Ենբ· ճարտարի [12] Ենբ· զի լիցէ ի վերայ ժապաւինի

22 Եւ [1]արարին զվտաւակն ի վերայ վա-
կասին", գործ անկուածոյ համակ կապու-
23 տակ ։ Եւ [2]օձիք վտաւակացն անդէն ի
նորին ի միջի անկուածոյ հիւսկէն՝ զրա-
24 պանաւ օձիքն շուրջանակի անքակ"։ Եւ
արարին առ ստորատով [3]վտաւակացն իբ-
րեւ ծաղկեալս նռնաձեւս ի կապուտակէ
եւ ծիրանւոյ եւ ի կարմրոյ մանելոյ եւ ի
25 բեհեզոյ նիւթելոյ ։ Եւ արարին զանգակս
յոսկւոյ սրբոյ, եւ եդին զզանգակսն ի մէջ
նռնաձեւսն առ ստորատով [3]վտաւակացն
26 շուրջանակի ։ Ի մէջ նռնաձեւսն զան-
գակս ոսկիս եւ նռնաձեւ, զանգակ եւ
նռնաձեւ՝ առ ստորատով [3]վտաւակացն
շուրջանակի ի սպաս պաշտամանն, որ-
պէս հրամայեաց Տէր Մովսիսի ։
27 Եւ արարին [4]պատմուճանս բեհեզե-
ղէնս գործ անկուածոյ՝ Ահարոնի եւ
28 որդւոց նորա ։ Եւ զապարօշսն ի բեհե-
զոյ, եւ զխոյրն ի բեհեզոյ, եւ զանդ-
րավարտսն [5]ստպաս ի նիւթոյ բեհեզոյ".
29 Եւ [6]զկամարս նոցա" ի բեհեզոյ նիւթե-
լոյ եւ ի կապուտակէ եւ ի ծիրանւոյ եւ
ի կարմրոյ մանելոյ, գործ նկարու, զոր
օրինակ հրամայեաց Տէր Մովսիսի ։
30 Եւ արարին զթիթեղն [7]ոսկի նուէր"
սրբութեանն յոսկւոյ սրբոյ. եւ գրե-
ցին ի նմա գիր դրոշմեալ քանդակի,
31 ՍՐԲՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ. Եւ եդին [8]առ
կապուտակեայ ժապաւէնն", զի կայ-
ցէ ի խոյրն ի վերոյ կողմանէ, զոր
օրինակ հրամայեաց Տէր Մովսիսի ։
32 Եւ կատարեցաւ ամենայն գործ խո-
րանին յարկի [9]վկայութեան. եւ արարին
որդիքն Իսրայէլի ըստ ամենայնի որպէս
եւ հրամայեաց Տէր Մովսիսի. նոյնպէս
եւ արարին ։ [10]Եւ զաւելորդ ոսկի նուէ-
րացն՝ արարին կահ պաշտելոյ նովաւ
33 առաջի Տեառն ։" Եւ բերին [11]զպատմու-
ճանն ի խորանն" առ Մովսէս, զյարկն
եւ զամենայն սպաս նորա, եւ [12]զա-
ռանցսն եւ զտախտակս նորա, եւ զպար-
զաւանս նորա, եւ զսիւնս նորա, եւ
34 զխարիսխս նորուն, Եւ [13]զմաշկսն, եւ
զմորթս խոյոցն ներկեալս կարմրով, եւ
զկիժականն կապուտակեայս", եւ զարա-
35 հանն որ ծածկէր, Զտապանակ կտա-
կարանացն, եւ զլծակսն, եւ զքաւու-
36 թիւնն, Զսեղանն [10]զառաջաւոր եւ զա-
մենայն զկահ նորա, եւ զհացն երեսաց,
37 Եւ զաշտանակն սուրբ եւ զճրագարանս
նորա եւ զճրագունսն սրբելոյ, եւ զա-
մենայն զկահ նորա, եւ զեւղն լուսոյ,
38 Եւ զսեղանն ոսկի, եւ զեւղն օծութեան,
եւ զխունկսն հանդերձանաց, եւ զարա-
39 հանս [14]դրանն, եւ զխորանն", Եւ զսեղանն
պղնձի եւ [15]զլծակս նորա, եւ զամենայն
զկահ նորա, եւ զաւազանն եւ զխարիսխ
40 նորա, Եւ [16]զառագաստ սրահին" եւ զսիւնս
նորա եւ զխարիսխս նորա, եւ զվարագոյր
դրան [17]խորանին եւ գլխոյ սրահին", եւ
զպարանս նորա եւ զցիցս նորա,
եւ զամենայն զկահ խորանին յարկի
41 [9]վկայութեանն, Եւ զպատմուճանն
պաշտաման պաշտել ի սրբութեանն, եւ
զպատմուճանն սրբութեանն որ իցեն
Ահարոնի քահանայի, եւ զպատմուճանս
42 որդւոց նորա ի քահանայութիւն ։ Ըստ
ամենայնի զոր միանգամ պատուիրեաց
Տէր Մովսիսի՝ նոյնպէս եւ արարին որ-
դիքն Իսրայէլի զամենայն կազմածն ։
43 Եւ ետես Մովսէս զամենայն գործն,
եւ էր գործեալ ըստ օրինակին որպէս
հրամայեաց Տէր Մովսիսի. նոյնպէս եւ
արարին. եւ օրհնեաց զնոսա Մովսէս ։

## Գլ. Խ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Յամսեանն առաջնում յամսամտի ամսոյն
կանգնեսցես զխորանն, զյարկ [9]վկայու-
3 թեանն ։ Եւ դիցես անդ զտապանակն
վկայութեան, եւ ծածկեսցես զտապա-
4 նակն վարագուրաւն ։ Եւ տարցիս ի ներքս
զսեղանն, եւ յօրինեսցես զհացն ի վերայ
նորա. եւ տարցիս ի ներքս զաշտանակն,
եւ դիցես ի վերայ նորա զճրագարանս
5 նորա ։ Եւ դիցես զսեղանն ոսկի՝ արկա-
նել խունկս առաջի տապանակի վկայու-
թեանն, եւ ձգեսցես զվարագուրակ [10]վա-
րագուրին ի" դրան խորանին [10]վկայու-
6 թեան ։ Եւ դիցես զսեղան ողջակիզացն
առ դրան խորանին, յարկի [9]վկայութեանն.
[10]Եւ օծցես շուրջ զխորանն, եւ զամենայն

[1] Ե֊բ. արար զպարեգօտ վակասին [2] Ե֊բ. օձիք պարեգօտին ի միջոցի նորա իբրեւ զօձիս զրահի, զի մի՛ շուրթն բերանոյ նորա պատառեսցի [3] Ե֊բ. պարեգօտին [4] Ե֊բ. շապիկս [5] Ե֊բ. կտաւեայս ի բեհեզոյ մանելոյ [6] Ե֊բ. զկամարն [7] Ե֊բ. պսակին [8] Ե֊բ. ի վերայ նորա ժապաւէն կապուտակեայ [9] Ե֊բ. ժողովոյ [10] Ե֊բ. ――― [11] Ե֊բ. զխորանն [12] Ե֊բ. զճարմանդսն [13] Ե֊բ. զծածկոյթն ի մորթոյ խոյոց ներկելոց կարմրով, և զծածկոյթս ի մորթոյ թեհաշի

[14] Ե֊բ. դրան խորանին [15] Ե֊բ. զգահաւորակ նորա պղնձի, զլծակս [16] Ե֊բ. զառագաստս գաւթին [17] Ե֊բ. գաւթին

ինչ որ ի նմա իցէ՝ սրբեսցես զուրջանակին"
7 Եւ դիցես զաւազանն ընդ խորանն վկա-
յութեան եւ ընդ սեղանն, եւ արկցես անդ
8 ջուր։ Եւ [1]օծցես [2]զսրահն շուրջանակի, եւ
9 ձգեսցես զսրահակ դրան [3]սրահին։ Եւ
առցես զիւղն օծութեան եւ օծցես զխո-
րանն եւ զամենայն որ ինչ ի նմա է, եւ
սրբեսցես զնա եւ զամենայն զկահ նո-
10 րա, եւ եղիցին սրբութիւնք։ Եւ օծ-
ցես զսեղանն ողջակիզաց եւ զամենայն
զկահ նորա, եւ սրբեսցես զսեղանն. եւ
11 եղիցի սեղանն՝ սուրբ սրբութեանց։ Եւ
օծցես զաւազանն եւ զխարիսխն նորա,
12 եւ սրբեսցես զնա։ Եւ մատուսցես զԱ-
հարոն եւ զորդիս նորա ի դուռն խորանին
վկայութեան, եւ լուասցես զնոսա ջրով։
13 Եւ զգեցուսցես Ահարոնի զպատմուճանն
սուրբ, եւ օծցես զնա եւ սրբեսցես զնա,
14 եւ քահանայասցի ինձ։ Եւ մատուսցես
զորդիս նորա, եւ զգեցուսցես նոցա [4]պատ-
15 մուճանս։ Եւ օծցես զնոսա, զոր օրինակ
օծեր զհայրն նոցա, եւ քահանայասցին
ինձ. եւ եղիցի նոցա օծումն քահանա-
յութեան յաւիտեան եւ յազգս նոցա։
16 Եւ արար Մովսէս ըստ ամենայնի զոր
միանգամ պատուիրեաց նմա Տէր. նոյն-
17 պէս եւ արար։ Եւ եղեւ յամսեանն առաջ-
նում յամի երկրորդի [5]ելանելոյ նոցա
յերկրէն Եգիպտացւոց" յամսամտին կանգ-
18 նեցաւ խորանն։ Եւ կանգնեաց Մովսէս
զխորանն, եւ եդ զխարիսխս նորա, եւ
կանգնեաց [6]զսիւնս նորա, [5]եւ եդ ի վե-
րայ զխոյակս նորա." եւ սփռեաց զսար-
19 գաւանս [7]նորա։ Եւ տարածեաց զվերնա-
փեղկն ի վերայ խորանին, եւ արկ զվի-
ժակս խորանին ի վերայ նորա ի վերուստ,
[5]եւ յօրինեաց զսրտախուրակս նորա,"
20 որպէս հրամայեաց Տէր Մովսիսի։ Եւ առ
զվկայութիւնն եւ եդ ի տապանակի անդ.
եւ [8]եդ զնիգսն ընդ տապանակաւն", եւ
եդ զքաւութիւնն ի վերայ տապանակին ի
21 վերուստ։ Եւ տարաւ ի ներքս զտապա-
նակն ի խորանն, եւ ձգեաց զպատրուակ
վարագուրին եւ ծածկեաց զտապանակ
վկայութեանն, զոր օրինակ հրամայեաց
22 Տէր Մովսիսի։ Եւ եդ զսեղանն ի խո-
րանին վկայութեան ի հիւսիսոյ կողմանէ
խորանին, արտաքոյ վարագուրի խորանին.
23 Եւ յօրինեաց ի վերայ նորա զհացն երե-
սաց առաջի Տեառն, զոր օրինակ հրա-
24 մայեաց Տէր Մովսիսի։ Եւ եդ զաշտա-
նակն ի խորանին վկայութեան յանդի-
մանս սեղանոյն, ի հարաւոյ կողմանէ
25 խորանին։ Եւ եդ զճրագարանսն ի վե-
րայ նորա առաջի Տեառն, զոր օրինակ
26 հրամայեաց Տէր Մովսիսի։ Եւ եդ զսե-
ղանն ոսկի ի խորանին վկայութեան՝ յան-
27 դիման վարագուրին. Եւ արկ խունկ ի վե-
րայ նորա ի խնկոց հանդերձանացն, որպէս
28 հրամայեաց Տէր Մովսիսի։ Եւ ձգեաց
29 զսրահակ դրան խորանին։ Եւ զսեղանն
ողջակիզաց եդ առ դրան խորանին, յարկի
վկայութեանն. եւ եհան ի վերայ նորա
ողջակէզս եւ զոհս, որպէս պատուիրեաց
30 Տէր Մովսիսի։ Եւ եդ զաւազանն ընդ խո-
րանն վկայութեան եւ ընդ սեղանն, եւ
31 արկ ի նա [9]ջուր. Զի լուասցեն" ի նմանէ
Մովսէս եւ Ահարոն եւ որդիք նորա զձեռս
32 եւ զոտս իւրեանց. Յորժամ [10]մտանիցեն
ի խորանն վկայութեան, կամ յորժամ
[11]մերձենայցեն ի սեղանն [5]պաշտել. եւ"
լուանային ի նմանէ, որպէս եւ հրա-
33 մայեաց Տէր Մովսիսի։ Եւ կանգնեաց
[12]զսրահն շուրջ զխորանաւն եւ զսեղա-
նաւն, եւ ձգեաց զսրահակ դրան [13]սրահին։
Եւ կատարեաց Մովսէս զամենայն զգործն։
34 Եւ ծածկեաց ամպն զխորանն վկայու-
թեան, եւ լի եղեւ փառօք Տեառն խո-
35 րանն։ Եւ ոչ կարէր Մովսէս մտանել ի
խորանն վկայութեան, զի ծածկեաց զնա
ամպն, եւ լի եղեւ փառօք Տեառն խո-
36 րանն։ Յորժամ վերանայր ամպն ի խո-
րանէ անտի, չուէին որդիքն Իսրայելի
[14]հանդերձ ամենայն աղխիւ" իւրեանց.
37 Եւ եթէ ոչ վերանայր ամպն, ոչ չուէին
38 մինչեւ ցօրն վերանալոյ։ Զի ամպն
Տեառն էր ի վերայ խորանին ի տուէ,
եւ հուր կայր ի վերայ նորա ի գիշերի,
առաջի ամենայն տանն Իսրայելի, յա-
մենայն ի չուս իւրեանց։

[1]Եբր. դիցես [2]Եբր. զգաւիթն [3]Եբր. գաւթին
[4]Եբր. շապիկս [5]Յեբր. պակաս [6]Եբր. զտախ-
տակս [7]Եբր. նորա, և կանգնեաց զսիւնս նորա
[8]Եբր. ագդյց զլծակն ընդ տապանակն

[9]Եբր. ջուր առ ի լուանալ։ (31) Եւ լուանային
[10]Եբր. մտանէին [11]Եբր. մերձենային [12]Եբր.
զգաւիթն [13]Եբր. գաւթին [14]Եբր. յամե-
նայն ի չուս

# ԳԼՈՒԽՔ ՂԵՒՏԱԿԱՆԻՆ

# ՂԵՒՏԱԿԱՆ

## ԳԼՈՒԽ Ա

1 Եւ կոչեաց Տէր զՄովսէս, եւ խօ-
սեցաւ ընդ նմա ի խորանէ անտի
2 [1]վկայութեան՝ եւ ասէ. Խօսեաց դու ընդ
որդւոց Իսրայէլի, եւ ասասցես ցնոսա,
Այր որ ի ձէնջ եթէ մատուցանիցէ պատա-
րագ Տեառն՝ ի խաշանց, յարջառոյ կամ յոչ-
խարէ մատուցանիցէք զպատարագս ձեր։
3 Եթէ ողջակէզ իցէ պատարագն նորա
յարջառոց, արու անարատ մատուսցէ,
առ դուրս խորանին [1]վկայութեան ածցէ
զնա ընդունելութիւն [2]ի նմանէ՝ առ ի
4 քաւելոյ՝՝ առաջի Տեառն։ Եւ դիցէ զձեռն
իւր ի վերայ գլխոյ [3]ընծայիցն՝ յընդունե-
լութիւն նմա առ ի քաւելոյ վասն անձին
5 իւրոյ։ Եւ [4]սպանցեն զզուարակն առա-
ջի Տեառն. եւ մատուսցեն քահանայքն
որդիքն Ահարոնի զարիւնն, եւ [5]հեղցեն
շուրջ զսեղանովն որ կայցէ առ դրան
6 խորանին [1]վկայութեան։ Եւ [6]մորթեսցեն
զողջակէզն, եւ անդամ անդամ [7]յօշես-
7 ցեն զնա։ Եւ դիցեն որդիքն Ահարոնի
քահանայքն հուր ի վերայ սեղանոյն, եւ
8 կուտեսցեն փայտ ի վերայ հրոյն. Եւ
դիցեն որդիքն Ահարոնի քահանայքն
զանդամահատութիւն եւ զգլուխն եւ զճարպն
ի վերայ փայտին որ կայցէ ի վերայ հրոյ
9 սեղանոյն. Եւ զփորոտին եւ զոտսն
[8]լուասցեն ջրով. եւ դիցեն քահանայքն՝՝
զամենայն ի վերայ սեղանոյն. զի ող-
ջակէզ զոհի է ի հոտ անուշից Տեառն։
10 Ապա թէ [9]յոչխարոց իցէ պատարագն
Տեառն, ի գառանց եւ յուլոց՝՝ յողջա-
կէզ, արու անարատ մատուցանիցէ
11 զնա։ Եւ [10]դիցէ զձեռն իւր ի վերայ
գլխոյ նորա. եւ սպանցեն՝՝ զնա ի կող-
մանց սեղանոյն ընդ հիւսիսի՝ առաջի
Տեառն. եւ [5]հեղցեն զարիւնն՝՝ որդիքն
Ահարոնի քահանայք շուրջ զսեղանովն։
12 Եւ [7]յօշեսցեն զնա անդամ անդամ, եւ
զգլուխ նորա եւ զճարպ. եւ դիցեն
զայն քահանայքն ի վերայ փայտին եւ
13 հրոյ որ ի վերայ սեղանոյն իցէ։ Եւ զփո-
րոտին եւ զոտսն [11]լուասցեն ջրով. եւ
մատուսցէ քահանայն զամենայն, եւ
[12]դիցէ ի վերայ սեղանոյն. զի ողջակէզ
զոհի է ի հոտ անուշից Տեառն։
14 Իսկ եթէ ի թռչնոց մատուցանիցէ յող-
ջակէզ պատարագ Տեառն, ի տատրակաց
կամ [13]յաղաւնեաց տացէ զպատարագն
15 իւր։ Եւ մատուսցէ զնա քահանայն առ
սեղանն. եւ խառեսցէ զգլուխ նորա,
եւ [12]դիցէ քահանայն՝՝ ի վերայ սեղանոյն,
եւ քամեսցէ զարիւնն առ յատակաւ սե-
16 ղանոյն։ Եւ կորզեսցէ [14]զարմկունսն թեւ-
օքն հանդերձ՝՝. եւ հանցէ զայն առ [15]սե-
17 ղանովն ի տեղի մոխրակուտին։ Եւ ջախ-
ջախեսցէ զայն ի թեւոցն, եւ ի բաց մի զա-
տուսցէ. եւ [12]դիցէ զայն քահանայն ի
սեղանն ի վերայ փայտին եւ հրոյ. զի
ողջակէզ զոհի է ի հոտ անուշից Տեառն։

## ԳԼ. Բ

1 Եւ անձն որ եթէ մատուցանիցէ պա-
տարագ Տեառն, նաշիհ լիցի պատա-
րագն նորա. եւ արկցէ զնովաւ եւղ,
եւ դիցէ ի վերայ նորա կնդրուկ. [2]զի
2 զոհ է՝՝ Եւ տարցի զայն առ քահանայսն
որդիս Ահարոնի. եւ լցեալ զձեռն իւր
ի նաշհոյ անտի իւղովն հանդերձ, եւ
զամենայն զկնդրուկն նորա, [12]դիցէ քա-
հանայն զյիշատակ նորա ի վերայ սեղա-
3 նոյն զոհ ի հոտ անուշից Տեառն։ Եւ
նշխարն ի զոհէ անտի՝ Ահարոնի եւ որդ-
ւոց իւրոց լիցի, սրբութիւն սրբու-
թեանց ի զոհից անտի Տեառն։
4 Ապա թէ [16]մատուցանիցէ պատարագ

---

[1] Եբր. ժողովոյ [2] Եբր. [illegible] [3] Եբր. ողջակիզին [4] Եբր. սպանցէ [5] Եբր. սրսկեսցեն զարիւնն [6] Եբր. մորթեսցէ [7] Եբր. յօշեսցէ [8] Եբր. լուասցէ ջրով. և այրեսցէ քահանայն [9] Եբր. ի հօտից իցէ պատարագն, յօդեաց և յայծեաց [10] Եբր. սպանցէ

[11] Եբր. լուասցէ [12] Եբր. այրեսցէ [13] Եբր. ի ձագուց աղաւնեաց [14] Եբր. զխածին և զփետուրսն, կամ. զաղբն [15] Եբր. սեղանովն ընդ արեւելս [16] Եբր. մատուցանիցես

[1]զոհ եփեալ ի թոնրի, պատարագ Տեառն
ի նաշհոյ՝ պանս բաղարջս ի նաշհոյ զան-
գեալ իւղով, եւ քաքարս բաղարջս օծ-
եալ իւղով։
5 Իսկ եթէ զոհ ի տապակէ իցէ պա-
տարագն քո, նաշիհ զանգեալ իւղով
6 բաղարջ լինիցի։ Եւ բրդեսցես զայն
պատառս պատառս, եւ արկցես ի վե-
րայ նորա իւղ. զի զոհ [2]Տեառն է։
7 Ապա թէ զոհ ի կասկարայից իցէ պա-
տարագն քո, նաշիհ իւղով գործեսցի։
8 Եւ մատուսցես զզոհն զոր առնիցես ի
նոցանէ Տեառն. եւ տարցիս առ քահա-
նայն. եւ մատուցեալ քահանային առ
9 սեղանն, Հանցէ ի զոհէն զառ ի յիշա-
տակէ նորա, եւ [3]դիցէ քահանայն ի վե-
րայ սեղանոյն. ընծայ անուշութեան
10 Տեառն է։ Եւ որ մնայցէ ի զոհէ անտի,
Ահարոնի եւ որդւոց նորա լինիցի, սրբու-
թիւն սրբութեանց ի զոհիցն [4]քոց։
11 Զամենայն զոհ զոր մատուցանիցէք
Տեառն, ոչ առնիցէք խմորուն. զամենայն
խմորուն եւ զամենայն մեղրեայ՝ մի՛ [5]մա-
տուցանիցէք ի նոցանէ [2]պտուղ ի զոհ
12 Տեառն։ Պատարագ պտղոյ մատուցանիցէք
զայն Տեառն, բայց ի սեղանն մի՛ ելանիցէ
13 ի հոտ անուշից [2]Տեառն։ Եւ ամենայն
պատարագ զոհից ձերոց աղիւ [2]Տեառն
յաղեսցի. մի՛ պակասեցուցանէք զաղ ուխ-
տին Աստուծոյ ի զոհից ձերոց. ընդ ամե-
նայն պատարագս աղ մատուցանիցէք։
14 Իսկ եթէ յառաջին արմտեաց մատու-
ցանիցես պատարագ Տեառն, մուրկ նոր
փխրեալ եւ մանրեալ [2]Տեառն, մատուս-
15 ցես զոհ զառաջնոց արմտեաց քոց. Եւ
արկցես զնովաւ իւղ, եւ դիցես ի վերայ
16 նորա կնդրուկ. զի զոհ է։ Եւ հանցէ
քահանայն զառ յիշատակէ նորա ի մկկէ
անտի հանդերձ իւղովն, եւ զամենայն
կնդրուկ նորա, զի պտուղ Տեառն է.

ԳԼ. Գ

1 Ապա թէ զոհ [6]փրկութեան իցէ պատա-
րագ նորա [2]Տեառն, եթէ յարջառոց մա-
տուցանիցէ, եթէ արու իցէ, եւ եթէ էգ
իցէ, զանարատն մատուսցէ առաջի
2 Տեառն։ Եւ դիցէ զձեռս իւր ի վերայ
գլխոյ պատարագին. եւ սպանցէ զնա առ
դրան խորանին վկայութեան. եւ [7]հեղցեն
որդիքն Ահարոնի քահանայք զարիւնն ի
վերայ սեղանոյ ողջակիզացն շուրջանակի։
3 Եւ մատուսցէ ի զոհէն [6]փրկութեան պտուղ
Տեառն՝ զճարպ թաղանթ քաղրթին, եւ
4 զամենայն ճարպ փորոտւոյն, Եւ զերկուս
երիկամունսն եւ զճարպն որ ի նոսա՝ որ առ
մանամրքն իցեն, եւ զպլերդաբոյթն երի-
5 կամամբքն հանդերձ [8]կորզեսցեն։ Եւ
հանցեն՚՚ զայն որդիքն Ահարոնի [2]քահա-
նայք ի սեղանն յողջակէզ ի վերայ փայ-
տին եւ հրոյն պտուղ անուշից Տեառն։
6 Ապա թէ յոչխարաց իցէ պատարագ նորա
զոհ [6]փրկութեան Տեառն, արու կամ
7 էգ, անարատ մատուսցէ զայն։ Իսկ ե-
թէ գառն մատուցանիցէ զպատարագն
իւր, մատուսցէ զնա առաջի Տեառն.
8 Եւ դիցէ զձեռն իւր ի վերայ գլխոյ պա-
տարագին իւրոյ, եւ սպանցէ զնա առ
դրան խորանին վկայութեան. եւ [7]հեղ-
ցեն որդիքն Ահարոնի [2]քահանայք զա-
9 րիւնն շուրջ զսեղանովն։ Եւ [9]մատուս-
ցեն ի զոհէն [6]փրկութեան պտուղ Տեառն.
զճարպն եւ զմսանն անարատ՝ հանդերձ
զըստոքն հանցէ ի նմանէ, եւ զճարպ
թաղանթ քաղրթին, եւ զամենայն ճարպ
10 փորոտւոյն, Եւ զերկոսին երիկամունսն
եւ զճարպն որ ի նոսա որ առ մանամբքն,
եւ զպլերդաբոյթն հանդերձ երիկամամբքն
11 կորզեալ՝ Հանցէ քահանայն ի սեղանն
հոտ անուշից պտուղ Տեառն։
12 Իսկ եթէ յայծեաց իցէ պատարագն
13 իւր, մատուսցէ առաջի Տեառն. Եւ
դիցէ զձեռն իւր ի վերայ գլխոյ նորա,
եւ [10]սպանցեն զնա [2]առաջի Տեառն՚՚ առ
դրան խորանին վկայութեան. եւ [7]հեղ-
ցեն որդիքն Ահարոնի [2]քահանայք զա-
14 րիւնն շուրջ զսեղանովն։ Եւ [9]հանցեն
ի նմանէ պտուղ Տեառն զճարպն զթա-
ղանթ քաղրթին, եւ զամենայն զճարպ
15 փորոտւոյն, Եւ զերկուս երիկամունսն,
եւ զճարպն ի նոսա՝ որ առ մանամբքն,
եւ զպլերդաբոյթն երիկամամբքն հան-
16 դերձ կորզեսցէ. Եւ [11]հանցէ քահանայն
ի սեղանն պտուղ ի հոտ անուշից Տեառն.
17 զամենայն ճարպ Տեառն՚՚։ Օրէն յաւի-

[1] Եբր. մինխայ, որ նշանակէ բազում տուրք նուէր կամ ընծայ որ լինի առանց արեան [2] Եբր. Եհովայե [3] Եբր. այրեսցէ [4] Եբր. Տեառն [5] Եբր. այրիցէք [6] Եբր. խաղաղութեան

[7] Եբր. սրսկեսցեն [8] Եբր. կորզեսցէ։ (5) Եւ այրեսցեն [9] Եբր. մատուսցէ [10] Եբր. սպանցէ [11] Եբր. այրեսցէ զնոսա քահանայն ի վերայ սեղանոյն կերակուր պատարագի ի հոտ անուշից. ամենայն ճարպ Տեառն է

տենական յազգս ձեր , յամենայն բնա-
կութեան ձերում . զամենայն ճարպ եւ
զամենայն արիւն մի՛ ուտիցէք ։

ԳԼ. Դ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ ,
2 Խօսեաց դու ընդ որդիսդ Իսրայէլի եւ
ասասցես , Անձն եթէ մեղիցէ [1]առաջի
Տեառն՚՚ ակամայ յամենայն հրամանաց
Տեառն յորոց չէ արժան առնել եւ առ-
3 նիցէ ինչ ի նոցանէ , Եթէ [2]քահանայա-
պետն օծեալ մեղանչիցէ առ ի զժողո-
վուրդն յանցուցանելոյ , մատուսցէ վասն
մեղաց իւրոց զոր մեղաւ՝ զուարակ
յանդւոյ անարատ Տեառն՝ վասն մեղաց.
4 Եւ ածցէ զզուարակն ի դուռն խորանին
վկայութեան առաջի Տեառն , եւ դիցէ
զձեռս իւր ի վերայ գլխոյ զուարակին
[3]առաջի Տեառն , եւ սպանցեն՚՚ զզուա-
5 րակն առաջի Տեառն ։ Եւ առեալ քա-
հանայն օծելոյ [1]կատարելոյ ի ձեռս իւր՚՚
յարենէ զուարակին , եւ տարցի զայն ի
6 խորանն վկայութեան ։ Եւ թացցէ քա-
հանայն զմատն իւր յարեանն , եւ ցա-
նեսցէ յարենէ անտի եւթն անգամ մա-
տամբն իւրով առաջի Տեառն առ վա-
7 րագուրաւն սրբութեան ։ Եւ դիցէ քա-
հանայն յարենէ զուարակին ի վերայ եղ-
ջերաց սեղանոյ խնկոցն համադրեանց
առաջի Տեառն՝ որ կայ ի խորանին վկա-
յութեան , եւ զամենայն արիւն զուա-
րակին հեղցէ առ յատակաւ սեղանոյն
ողջակիզաց, որ կայցէ առ դրան խորա-
8 նին վկայութեան ։ Եւ զամենայն ճարպ
զուարակին մեղաց կորզեսցէ ի նմանէ ,
զճարպ թաղանթ քաղրթին եւ զամե-
9 նայն ճարպ փորոտւոյն , Եւ զերիկա-
մունսն երկոսին , եւ զճարպն որ ի նո-
սա որ առ մսանամբքն , եւ զերդարոյթն
10 երիկամամբքն հանդերձ կորզեսցէ , Զոր
օրինակ առնուցու ի զուարակէ զոհի
[4]փրկութեանն , եւ հանցէ՚՚ քահանայն
11 ի սեղանն ողջակիզաց ։ Եւ զմորթ զուա-
րակին եւ զամենայն մարմին նորա հան-
դերձ գլխովն եւ ոտիւք եւ քաղրթաւն
12 եւ ապաւստաւն [5]Հանցեն ողջոյն զզուա-
րակն արտաքոյ բանակին ի տեղի մի
սուրբ , ուր զմոխիրն հեղուցուն , եւ

[1]Յեբր. գ—լ—ւ [2]Եբր. քահանայն [3]Եբր. և սպանցէ
[4]Եբր. խաղաղութեան, և այրեսցէ զնոսա [5]Եբր.
Հանցէ

այրեսցեն զնա ի վերայ փայտի հրով .
ի վերայ մոխրակուտին այրեսցի ։
13 Ապա թէ ամենայն ժողովուրդ որդւոցն
Իսրայելի անգիտանայցէ ակամայ , եւ
[6]մոռանայցի բանն յաչաց ժողովրդեանն,
եւ առնիցեն ինչ մի յամենայն պատուի-
րանաց Տեառն որ ոչ առնիցի , եւ յան-
14 ցանիցեն , Եւ յայտնիցի նոցա մեղքն
որ մեղան նովաւ , մատուսցէ ժողո-
վուրդն զուարակ անարատ յանդւոյ վասն
մեղաց . եւ ածցէ զնա ի դուռն խո-
15 րանին վկայութեան ։ Եւ դիցեն ծերք
ժողովրդեանն զձեռս իւրեանց ի վերայ
գլխոյ զուարակին առաջի Տեառն . եւ
սպանցեն զզուարակն առաջի Տեառն ։
16 Եւ տարցի քահանայն օծեալ յարենէ
զուարակին ի խորանն վկայութեան ։
17 Եւ թացցէ քահանայն զմատն իւր յա-
րենէ զուարակին , եւ ցանեսցէ եւթն
անգամ առաջի Տեառն յանդիման վա-
18 րագուրին [1]սրբութեան ։ Եւ դիցէ յարե-
նէ անտի քահանայն ի վերայ եղջերաց
սեղանոյն [1]խնկոցն համադրեանց՚՚, որ
կայցէ առաջի Տեառն ի խորանին վկա-
յութեան , եւ զամենայն զարիւնն հեղ-
ցէ առ յատակաւ սեղանոյն ողջակիզաց
որ է առ դրան խորանին վկայութեան ։
19 Եւ զամենայն ճարպն կորզեսցէ ի նմա-
20 նէ եւ [7]հանցէ ի սեղանն՚՚ ։ Եւ արասցէ
զուարակին զոր օրինակ արար զուա-
րակին մեղաց , նոյնպէս արասցէ եւ
նմա . եւ քաւեսցէ վասն նոցա քահա-
21 նայն , եւ թողցին նոցա մեղքն ։ Եւ
[8]հանցեն զզուարակն ողջոյն արտաքոյ
բանակին , եւ [9]այրեսցեն զզուարակն ,
զոր օրինակ [10]այրեցին զառաջին զուա-
րակն . զի վասն մեղաց ժողովրդեանն է ։
22 Եւ եթէ իշխանն մեղիցէ, եւ արասցէ
մի ինչ ի պատուիրանաց Տեառն Աստուծոյ
որ ոչ առնիցի , եւ յանցանիցէ ակամայ ,
23 Եւ յայտնեսցին նմա մեղքն զոր մեղաւ ,
մատուսցէ զպատարագն իւր նոխազ յայծ-
24 եաց՝ արու անարատ . Եւ դիցէ զձեռս
իւր ի վերայ գլխոյ նոխազին, եւ [11]սպան-
ցեն զնա ի տեղւոջ ուր սպանանիցեն
զողջակէզսն առաջի Տեառն . քանզի մե-
25 ղաց է ։ Եւ առցէ քահանայն յարենէ
անտի [12]մեղացն մատամբ իւրով եւ դիցէ
ի վերայ եղջերաց սեղանոյն ողջակիզաց,

[6]Եբր. ծածկեսցի [7]Եբր. այրեսցէ ի վերայ սեղա-
նոյն [8]Եբր. Հանցէ [9]Եբր. այրեսցէ [10]Եբր.
այրեաց [11]Եբր. սպանցէ [12]Եբր. մեղացայոյն

եւ զամենայն արիւն նորա հեղցէ առ
26 յատակաւ սեղանոյ ողջակիզացն ։ Եւ
զամենայն ճարպ նորա [1]հանցէ ի սե-
ղանն", իբրեւ զճարպ զոհի [2]փրկութեանն.
եւ քաւեսցէ վասն նորա քահանայն ի
մեղաց անտի [3]իւրոց, եւ թողցի նմա ։
27 Եւ եթէ մեղիցէ անձն ակամայ ի ժո-
ղովրդենէ երկրին՝ յառնել նմա մի ինչ
յամենայն պատուիրանացն Տեառն որ
28 ոչ առնիցի, եւ յանցանիցէ, Եւ յայտնես-
ցին նմա մեղքն զոր մեղաւ, մատուսցէ
զպատարագ իւր այծ անարատ վասն
29 մեղացն զոր մեղաւ ։ Եւ դիցէ զձեռս
իւր ի վերայ գլխոյ նորա, եւ [4]սպանցեն
զայծն" զվասն մեղացն ի տեղւոջ ուր
30 սպանանիցեն զողջակէզսն ։ Եւ առցէ
քահանայն յարենէ նորա մատամբ իւ-
րով, եւ դիցէ ի վերայ եղջերաց սեղա-
նոյն ողջակիզաց, եւ զամենայն արիւն
նորա հեղցէ առ յատակաւ սեղանոյ ող-
31 ջակիզացն։ Եւ զամենայն զճարպն կոր-
զեսցէ՝ զոր օրինակ կորզիցի ճարպ յող-
ջակիզէ [2]փրկութեանն. եւ [5]հանցէ զայն
քահանայն ի սեղանն ի հոտ անուշից
Տեառն. եւ քաւեսցէ վասն նորա քա-
32 հանայն, եւ թողցի նմա ։ Եւ եթէ ոչ-
խար մատուցանիցէ զպատարագն իւր,
33 էգ անարատ մատուսցէ զնա. Եւ դիցէ
զձեռն իւր ի վերայ գլխոյ նորա որ վասն
մեղացն իցէ. եւ [4]սպանցեն զնա ի
տեղւոջն ուր սպանանիցեն զողջակէզսն։
34 Եւ առեալ քահանային յարենէ այնր որ
վասն մեղացն իցէ մատամբն իւրով, եւ
դիցէ ի վերայ եղջերաց սեղանոյ ողջա-
կիզացն. եւ զամենայն արիւն նորա հեղ-
ցէ առ յատակաւ սեղանոյն ողջակիզացն։
35 Եւ զամենայն զճարպ նորա կորզեսցէ՝
զոր օրինակ կորզիցի ճարպ ոչխարին
[2]փրկութեան. եւ դիցէ զայն քահանայն
ի վերայ սեղանոյն յողջակէզ Տեառն. եւ
քաւեսցէ վասն նորա քահանայն ի մե-
ղաց անտի զոր մեղաւ, եւ թողցի նմա։

## ԳԼ. Ե

1 Եւ եթէ մեղիցէ անձն, եւ լուիցէ
զբարբառ երդման, եւ նա իցէ վկայ, կամ
թէ ետես կամ թէ իրազէտ իցէ, եթէ
2 ոչ հանիցէ ի վեր, մեղս ընկալցի ։ Եւ
անձն որ մերձեսցի յիրս պղծութեան,
կամ ի մեռելոտի, կամ ի գազանաբեկ,
կամ ի պիղծ ինչ, կամ ի մեռելոտիս
անասնոց պղծոց, կամ ի մեռելոտիս սող-
նոց պղծոց, եւ անցանիցէ զնովաւ, եւ
3 ինքն պղծիցի եւ յանցանիցէ. Կամ
մերձենայցէ ի պղծութիւնս մարդոյ կամ
յամենայն պղծութիւնս նորա, յոր թէ
մերձեցեալ պղծիցի, եւ մոռացօնք լինի-
ցին նմա, եւ յետ այնորիկ ի վերայ հա-
4 սանիցէ, եւ յանցանիցէ ։ Եւ անձն որ
ուխտիցէ չար ինչ առնել կամ բարի,
ըստ ամենայնի որ ինչ ուխտիցէ մարդ
երդմամբ չափ, եւ [6]մոռանայցի այն յա-
չաց նորա, եւ ապա ի վերայ հասանիցէ,
եւ մեղանչիցէ միով իւիք ի նոցանէ.
5 Եւ [7]խոստովան լինիցի զմեղսն՝ զոր մե-
6 ղաւ. [8]Մատուսցէ վասն յանցանացն զոր
յանցեաւ Տեառն, եւ" վասն մեղացն զոր
մեղաւ, էգ յօդեաց որոջ, կամ այծ մի
յայծեաց վասն մեղացն. եւ քաւեսցէ
վասն նորա քահանայն ի մեղաց անտի,
[9]եւ թողցին նմա մեղքն ։"
7 Ապա թէ չիցէ ձեռնհաս լինել բաւա-
կան ոչխարաւ, մատուսցէ վասն մե-
ղացն զոր մեղաւ երկուս տատրակս
կամ երկուս ձագս աղաւնեաց, մին վասն
8 մեղացն, եւ մին յողջակէզ ։ Ածցէ առ
քահանայն, եւ տարցի ի ներքս քահա-
նայն նախ զվասն մեղացն, եւ խածեսցէ
քահանայն զգլուխն յուղանէ անտի եւ
9 մի՛ հատցէ. Եւ ցանեսցէ յարենէ անտի
այնր որ վասն մեղացն իցէ՝ զորմով սե-
ղանոյն, եւ զմնացեալ արիւնն քամես-
ցէ առ յատակաւ սեղանոյն. քանզի
10 վասն մեղաց է. Եւ զերկրորդն արասցէ
յողջակէզ որպէս եւ օրէն իցէ. եւ քա-
ւեսցէ վասն նորա քահանայն ընդ մե-
ղացն զոր մեղաւ, եւ թողցի նմա ։
11 Եւ եթէ ոչ գտանիցէ ընդ ձեռամբ
նորա զոյգս տատրակաց կամ երկու
ձագս աղաւնեաց, բերցէ զպատարագն
իւր վասն որոյ մեղաւն՝ զտասանորդ գրուի
միոյ նաշհի վասն մեղացն. եւ եւղ մի՛
արկցէ ի նա, եւ կնդրուկ մի՛ դիցէ ի վերայ
12 նորա, զի վասն մեղաց է։ Եւ տարցի զայն
առ քահանայն. եւ առեալ քահանայն ի
նմանէ լի ափով զառ ի յիշատակէն նորա,

[1]Եբր. այրեսցէ ի վերայ սեղանոյն [2]Եբր. խաղաղութեանն [3]Եբր. նորա [4]Եբր. սպանցէ [5]Եբր. այրեսցէ

[6]Եբր. ծածկեսցի [7]Եբր. եղիցի թէ մեղուցեալ իցէ միով իւիք ի նոցանէ, և խոստովան [8]Եբր. Եւ մատուսցէ Տեառն զվասն յանցանացն [9]Եբր. պակասէ

[1]դիցէ ի վերայ սեղանոյ ողջակիզաց"
13 Տեառն. քանզի վասն մեղաց է։ Եւ քա-
ւեսցէ վասն նորա քահանայն զմեղսն զոր
մեղաւ՝ որով իւիք եւ իցէ ի նոցանէ,
եւ թողցի նմա. եւ մնացեալն՝ քահա-
նային եղիցի իբրեւ զզոհ նաշհոյ։
14 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ,
15 Անձն որ թէ վրիպեսցի եւ մեղիցէ ա-
կամայ ի սրբութեանց անտի Տեառն՝ մա-
տուսցէ վասն յանցանացն իւրոց Տեառն
խոյ անարատ յօդեաց՝ [2]գնոց արծաթոյ
ի կշռուն սկեղէ" ըստ սրբութեան սկեղն,
16 վասն որոյ յանցուցեալն իցէ։ Եւ զոր
մեղաւն ի սրբութենէն, հատուսցէ, եւ
զհինգերորդ եւս մասնն յաւելցէ ի նոյն,
եւ տացէ ցքահանայն. եւ քաւեսցէ ի
նմանէ քահանայն խոյիւն որ վասն յան-
ցանացն իցէ, եւ թողցի նմա։
17 Եւ անձն որ մեղիցէ, եւ արասցէ մի ինչ
յամենայն պատուիրանաց Տեառն զոր չիցէ
պարտ առնել, եւ ոչ իմանայցէ եւ յան-
18 ցանիցէ եւ ընդունիցի մեղս, Ածցէ խոյ
անարատ ի խաշանց [3]գնոց արծաթոյ" վասն
յանցութեանն՝ առ քահանայն. եւ քաւեսցէ
վասն նորա քահանայն վասն անգիտու-
թեանն զոր անգիտացաւ եւ ինքն ոչ գի-
19 տէր, եւ թողցի նմա. [4]Քանզի յանցեաւ
յանցութիւն յանցանաց առաջի Տեառն։

ԳԼ. Զ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ,
2 Անձն ոք եթէ մեղիցէ, եւ արհամար-
հելով արհամարհիցէ զպատուիրանս
Տեառն, եւ ստեսցէ ընկերի իւրում, ե-
թէ յաւանդի, եթէ ի զօղորդութեան եւ
եթէ ի յափշտակութեան, եւ եթէ զնա-
3 սեսցէ ինչ ընկերի իւրում, Եւ եթէ ե-
գիտ կորուստ ինչ եւ ժխտիցէ ի վերայ
նորա, եւ երդնուցու սուտ վասն միոյ
իրիք, յամենայնէ զոր եւ առնիցէ մարդ
4 առ ի մեղանչելոյ նոյա նոքօք, Եւ ե-
ղիցի յորժամ մեղանչիցէ եւ յանցանիցէ,
հատուսցէ զյափշտակութիւնն զոր յա-
փշտակեաց, կամ զզնասն զոր զնասեաց,
կամ զաւանդն որ աւանդեցաւ նմա,
5 կամ զկորուստն զոր եգիտ. Յամենայն
իրաց վասն որոյ երդուաւ սուտ, տու-
ժեսցի զգլուխն, եւ զհինգերորդ մասն
յաւելցէ ի նոյն. եւ որ իցէ՝ հատուսցէ
6 նմա յաւուր յորում յանդիմանեսցի։ Եւ
ընդ յանցանաց իւրոց մատուսցէ Տեառն
խոյ անարատ ի հօտից՝ [3]գնոց արծա-
7 թոյ" վասն որոյ յանցեաւն։ Եւ քաւես-
ցէ վասն նորա քահանայն առաջի Տեառն,
եւ թողցի նմա վասն միոյ իրիք յամե-
նայնէ զոր արար եւ յանցեաւ նա։
8 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ,
9 Պատուէր տուր Ահարոնի եւ որդւոց
նորա եւ ասասցես, Այս օրէն է ողջա-
կիզին. [5]վասն այրելոյ նորա ի վերայ"
սեղանոյն զամենայն գիշերն մինչեւ ցա-
ռաւօտ, եւ հուր սեղանոյն որ այրիցի ի
10 վերայ նորա՝ մի՛ շիջցի։ Եւ զգեցցի քա-
հանայն պատմուճան կտաւի, եւ անդ-
րավարտիս կտաւիս զգեցցի ի վերայ
մարմնոյ իւրոյ, եւ հանցէ [6]զընծայս ող-
ջակիզին ի վերայ սեղանոյն զոր հուրն
ծախիցէ", եւ դիցէ առընթեր սեղանոյն։
11 Եւ մերկասցի զպատմուճանն իւր, եւ
զգեցցի այլ պատմուճան, եւ հանցէ
[7]զողջակէզն արտաքոյ բանակին ի տեղի
12 սուրբ։ Եւ հուրն որ այրիցի ի վերայ
սեղանոյն՝ մի՛ շիջցի. եւ այրեսցէ ի վե-
րայ նորա քահանայն փայտ ընդ առա-
ւօտս, եւ դիցէ ի վերայ նորա զողջա-
կէզն, եւ [8]դիցէ ի նմա զճարպ [9]փրկու-
13 թեանն։ Եւ հուր հանապազ այրեսցի ի
վերայ սեղանոյն, եւ մի՛ շիջցի։
14 Եւ այս օրէն է [10]զոհին՝ զոր մատու-
ցանիցեն" որդիքն Ահարոնի [11]քահանայքն
15 առաջի Տեառն յանդիման սեղանոյն. Առցէ
ափով իւրով ի նաշհոյ զոհին հանդերձ իւ-
ղով նորա եւ կնդրկաւն որ իցէ ի վերայ
զոհին, եւ [12]հանցէ ի սեղանն" պտուղ ի
16 հոտ անուշից յիշատակ նորա Տեառն։ Եւ
զմնացեալն ի նմանէ կերիցեն Ահարոն եւ
որդիք նորա. բաղարջ կերիցի ի սուրբ
տեղւոջ. [13]ի սրահի խորանին վկայութեան
17 կերիցեն զնա։ Ոչ եփեսցի խմորեալ.
մասն ետու զայն նոցա ի պտղոցն [14]Տեառն.
սրբութիւնք սրբութեանց են, որպէս
վասն մեղացն իցէ, նոյնպէս եւ վասն
18 յանցանացն։ Ամենայն արու քահանա-
յիցն կերիցէ զայն. օրէն յաւիտենական
յազգս ձեր ի պտղոյ անտի Տեառն. ա-
մենայն որ մերձեսցի ի նոսա՝ սրբեսցի։

[1]Եբր. այրեսցէ ի վերայ սեղանոյն ի վերայ պատարագաց [2]Եբր. ըստ գնոց քոց սկեղ արծաթոյ [3]Եբր. ըստ գնոց քոց [4]Եբր. Վասն յանցանաց է այս.

[5]Եբր. ողջակէզն կացցէ ի վերայ հրոյ [6]Եբր. զմոխիրն որ ի ծախելոյ հրոյն զողջակէզն որ ի վերայ սեղանոյն [7]Եբր. զմոխիրն [8]Եբր. այրեսցէ [9]Եբր. խաղաղութեանն [10]Եբր. զոհին. մատուցանիցեն զնա [11]Յեբր. պկսէ [12]Եբր. այրեսցէ ի վերայ սեղանոյն [13]Եբր. ի գաւթի [14]Եբր. իմոց

19 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
20 Այս է պատարագ Ահարոնի եւ որդւոց
նորա զոր մատուցանիցեն Տեառն յաւուր
յորում օծանիցես զնա. զտասանորդ
գրւոյ միոյ նաշհոյ զոհ հանապազորդ,
զկէս նորա՝ այգուն, եւ զկէս նորա՝ ե-
21 րեկոյին։ Ի տապակի իւղով զանգեալ
գործեսցի. եւ մատուսցէ զայն մաքրեալ
զոհ ի պատառոյ, զոհ ի հոտ անուշից
22 Տեառն։ Քահանայն օծեալ փոխանակ նո-
րա յորդւոց իւրոց՝ արասցէ զայն, օրէն
յաւիտենական Տեառն. ամենեւին [1]կա-
23 տարեսցի։ Եւ ամենայն զոհ քահանային
ողջակէզ լինիցի, եւ մի՛ ուտիցի։
24 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
25 Խօսեաց ընդ Ահարոնի եւ ընդ որդիս
նորա եւ ասասջիր, Այս օրէն իցէ վասն
մեղացացոյն. ի տեղւոջ ուր սպանանի-
ցեն զողջակէզն՝ սպանցեն եւ զվասն
մեղացն առաջի Տեառն. սրբութիւն
26 սրբութեանց է։ Քահանայն որ մատու-
ցանիցէ զայն՝ կերիցէ. ի սուրբ տեղ-
ւոջ կերիցէ, [2]ի սրահի խորանին վկայու-
27 թեան։ Ամենայն որ մերձենայցէ ի միս
նորա՝ սրբեսցի. եւ յոյր ձորձոց վերայ
սրսկեսցի ի նմանէ արիւն՝ լուասցի ի
28 սուրբ տեղւոջ։ Եւ անօթ կաւեղէն յո-
րում եփեսցի, փշրեսցի. եւ եթէ ի
պղնձի անօթ եփեսցի, քերեսցէ զնա եւ
29 ջրով ողողեսցէ։ Ամենայն արու քահա-
նայից կերիցէ զայն. սրբութիւն սրբու-
30 թեանց է [3]Տեառն։ Եւ ամենայն վասն
մեղացն, յորոց մտանիցէ յարենէ նոցա ի
խորանն վկայութեան քաւել ի սրբու-
թիւնս, մի՛ կերիցի, այլ հրով այրեսցի։

## ԳԼ. Է

1 Եւ այս օրէն իցէ խոյին որ վասն յան-
ցանացն իցէ. [4]զի սրբութիւն սրբու-
2 թեանց է. Ի տեղւոջ ուր սպանանիցեն
զողջակէզն՝ սպանցեն եւ զխոյն յան-
ցանաց [4]առաջի Տեառն", եւ զարիւնն
[5]հեղցէ առ յատակաւ" սեղանոյն շուր-
3 ջանակի. Եւ զամենայն զճարպ նորա
առցէ [6]եւ զմկանն, եւ զամենայն ըղ-
ճարպ թաղանթ քաղրթին եւ զամենայն
4 ճարպ փորոտւոյն". Եւ զերիկամունսն
զերկոսին եւ զճարպն որ ի վերայ նոցա
առ մասնամբքն, եւ զլերդաբոյթն երի-

[1]Եբր. այրեսցի [2]Եբր. ի գաւթի [3]Եբր. այն [4]3Եբր. պակասի [5]Եբր. սրսկեսցէ ի վերայ [6]Եբր. զգմակն եւ զճարպն որ ծածկէ զփորոտին

5 կամամբքն հանդերձ կորզեսցէ. Եւ [7]հանցէ
զայն քահանայն ի սեղանն" պտուղ Տեառն.
6 զի վասն յանցանաց է։ Ամենայն արու
քահանայիցն կերիցէ զայն. ի սուրբ տեղ-
ւոջ կերիցեն զայն, քանզի սրբութիւն
7 սրբութեանց է։ Որպէս զվասն մեղացն՝
նոյնպէս եւ զվասն յանցանացն. օրէն՝ մի
եւ նոյն կացցէ նոցա. եւ քահանայն որ
8 քաւիցէ նովաւ՝ նմա լիցի։ Եւ քահանայն՝
որ մատուցանիցէ զողջակէզ ինչ մարդոյ,
մորթ ողջակիզին զոր մատուցանէ՝ նմա
9 եղիցի։ Եւ ամենայն [8]զոհ որ գործիցի ի
թոնրի, եւ ամենայն որ գործիցի ի կաս-
կարայս կամ ի տապակի, քահանային որ
10 մատուցանիցէ զայն՝ եղիցի։ Եւ ամե-
նայն զոհ զանգեալ իւղով եւ որ չիցէ
զանգեալ, ամենեցուն որդւոցն Ահարոնի
իւրաքանչիւր ումեք եղիցի հաւասարակաց։
11 Այս օրէն է զոհիցն [9]փրկութեան զոր
12 մատուցանիցեն Տեառն. Իսկ եթէ վասն
գոհութեան մատուցանիցէ զայն, մա-
տուսցէ վասն զոհի գոհութեանն պանս
բաղարջս [4]ի նաշհոյ զանգեալ իւղով, եւ
քաքարս բաղարջս օծեալ իւղով, եւ
13 նաշիհ զանգեալ իւղով, չօթիւք։ Բաղարջ
հացիւ մատուսցէ զպատարագն իւր ի
վերայ զոհին գոհութեան [9]փրկութեան։
14 Եւ մատուսցէ մի ինչ յամենայն պատա-
րագաց իւրոց նուէր Տեառն. եւ այն,
քահանային որ հեղուցու զարիւնն
15 [9]փրկութեան՝ լինիցի։ Եւ միս զոհին գո-
հութեան [9]փրկութեան՝ նորին լինիցի,"
յորում աւուր պատարագիցի՝ կերիցի,
16 եւ մի՛ թողուցուն ի նմանէ յայգ։ Եւ
եթէ [10]կամաւ ոք ուխտս մատուցանիցէ
զպատարագն իւր", յաւուր յորում մա-
տուցանիցէ զզոհն՝ կերիցի, եւ ի վաղիւ
17 [11]անդր. Եւ մնացեալն ի մսոյ զոհին մին-
18 չեւ յօրն երրորդ՝ հրով այրեսցի։ Ապա
թէ ուտելով ուտիցի ի մսոյ զոհին
[9]փրկութեան իւրոյ յաւուրն երրորդի,
մի՛ լինիցի ընդունելի, [12]մատուցանել-
եացն, եւ" մի՛ համարեսցի նմա այն.
քանզի [4]ապական եւ" պղծութիւն է, եւ
19 անձն որ կերիցէ ի նմանէ՝ մեղս առցէ։ Եւ
միս որ մերձեսցի յամենայն պղծութիւն՝
մի՛ կերիցի, այլ հրով այրեսցի. ամենայն

[7]Եբր. այրեսցէ զնոսա քահանայն ի վերայ սեղանոյն [8]Տե՛ս Գլ. Բ. 4։ [9]Եբր. խաղաղու-թեան [10]Եբր. ուխտ կամ կամաւոր ընծայ իցէ զոհ պատարագի նորա [11]Եբր. անդր մնացեալն ի նմանէ կերիցի [12]Եբր. որում մատուցանէն զայն՝

20 սուրբ կերիցէ զմիսն։ Եւ անձն որ կե-
րիցէ ի զոհէ [1]փրկութեանն որ իցէ Տեառն,
եւ պղծութիւն նորա ի նմա իցէ, կորիցէ
21 անձն այն ի ժողովրդենէ իւրմէ։ Եւ
անձն որ մերձեսցի յամենայն իրս պղծու-
թեան, ի պղծութենէ մարդոյ կամ յա-
նասնոց պղծոց, կամ յամենայն գարշե-
լիս պղծս, եւ կերիցէ ի մսոյ զոհին
[1]փրկութեան որ իցէ Տեառն, կորիցէ
անձն այն ի ժողովրդենէ իւրմէ։
22 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
23 Խօսեաց ընդ որդիսդ Իսրայելի եւ ա-
սասցես, Զամենայն ճարպ զարջառոյ
եւ զոչխարի եւ զայծեաց մի ուտիցէք։
24 Եւ ճարպ մեռելոտւոյ եւ գազանաբե-
կաց լինիցի յամենայն գործ, բայց ի կե-
25 րակուր մի ուտիցի։ Եւ ամենայն որ ու-
տիցէ ի ճարպոյ անասնոց զոր մատուցա-
նիցէք պտուղ Տեառն՝ կորիցէ անձն այն
26 ի ժողովրդենէ իւրմէ։ Զամենայն արիւն
մի ուտիցէք յամենայն բնակութիւնս
ձեր, ի թռչնոց եւ յամենայն անասնոց։
27 Ամենայն անձն որ կերիցէ արիւն՝ կո-
րիցէ ի ժողովրդենէ իւրմէ։
28 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
29 Խօսեաց ընդ որդիսդ Իսրայելի եւ ա-
սասցես, Որ մատուցանիցէ զոհ [1]փրկու-
թեան Տեառն, ածցէ զպատարագն իւր
30 Տեառն ի զոհէ [1]փրկութեան իւրոյ։ Ձեռք
նորա մատուսցեն [2]պտուղ Տեառն. [3]զճարպ
երրծոյն եւ զլերդաբոյթն մատուսցէ զնոյ
31 առաջի Տեառն։ Եւ հանցէ զայն քահա-
նայն ի սեղանն". եւ եղիցի երբուծն Ա-
32 հարոնի եւ որդւոց նորա։ Եւ զերին զաջոյ
տայցէք [4]հաս քահանային ի զոհից
33 [1]փրկութեան ձերոյ։ Որ մատուցանիցէ
զարիւնն [1]փրկութեան եւ զճարպն առ ի
յորդւոցն Ահարոնի, նորա լիցի երին աջոյ
34 ի մասն։ Զի զերբուծն [5]վերադրոյ եւ
զերին [6]նուիրացն առի ես յորդւոցն Իս-
րայելի ի զոհիցն [7]փրկութեան ձերոյ, եւ
ետու զայն" Ահարոնի քահանայի եւ որդ-
ւոց նորա, օրէն յաւիտենական յորդւոցն
35 Իսրայելի։ Այս օծումն է Ահարոնի եւ
որդւոց նորա ի [8]պտղոյ անտի Տեառն,
յաւուր յորում [9]մատուցանէր զնոսա",
36 Որպէս պատուիրեաց Տէր տալ նոցա
յաւուր յորում օծ զնոսա յորդւոցն Իսրա-
յելի, օրէն յաւիտենական յազգս նոցա։
37 Այս օրէն է ողջակիզացն եւ զոհից, եւ
վասն մեղացն, եւ վասն յանցանաց, եւ
վասն [10]կատարմանն եւ զոհին փրկու-
38 թեանն", Որպէս պատուիրեաց Տէր Մով-
սիսի ի լերինն Սինայ, յաւուր յորում
պատուիրեաց Տէր որդւոցն Իսրայելի,
մատուցանել զպատարագս իւրեանց ա-
ռաջի Տեառն յանապատին Սինայ։

## ԳԼ. Ը

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Առ զԱհարոն եւ զորդիս նորա, եւ
զպատմուճանս նոցա եւ զիւղն օծու-
թեան, եւ զզուարակն զվասն մեղաց
եւ զխոյսն զերկոսին եւ զկասկն բա-
3 ղարջոյ. Եւ զամենայն ժողովուրդն
եկեղեցացուցես ի դուռն խորանին վկա-
4 յութեան։ Եւ արար Մովսէս որպէս հրա-
մայեաց նմա Տէր. եւ եկեղեցացոյց զժո-
ղովուրդն ի դուռն խորանին վկայու-
5 թեան։ Եւ ասէ Մովսէս ցժողովուրդն,
Այս բան է զոր պատուիրեաց Տէր առ-
6 նել։ Եւ մատոյց Մովսէս զԱհարոն եւ
զորդիս նորա, եւ լուաց զնոսա ջրով.
7 Եւ զգեցոյց [11]Ահարոնի զպատմուճանն",
եւ ած ընդ մէջ նորա զկամարն, եւ
արկ զնովաւ [12]զվտաւակն, եւ եդ ի
վերայ նորա զվակասն, եւ խառնեաց ի
նմա [13]ըստ գործուածոյ" վակասին, եւ
8 պնդեաց զնա ի նմա։ Եւ եդ ի վերայ
նորա զտախտակն, եւ եդ ի վերայ
տախտակին [14]զՅայտնութիւնն եւ
9 զՃշմարտութիւն"։ Եւ եդ ի վերայ գլխոյ
նորա զխոյրն, եւ եդ ի վերայ խոյրն
յերեսաց կողմանէ զթիթեղն ոսկի,
զնուիրեալն եւ զսուրբ, որպէս պատ-
10 ուիրեաց Տէր Մովսիսի։ Եւ առեալ Մով-
սիսի [15]յիւղոյ օծութեանն՝ ցանեաց ի
11 վերայ սեղանոյն եւթն անգամ. Եւ օծ
զսեղանն եւ սրբեաց զնա եւ զամենայն

[1] Ոմն. խաղաղութեան [2] Ոմն. պատարագ [3] Ոմն. զճարպն հանդերձ երրծովն մատուսցէ. երբուծն երերման երերեսցի առաջի Տեառն. (31) Եւ զճարպն այրեսցէ քահանայն ի վերայ սեղանոյն [4] Ոմն. ի վերացումն [5] Ոմն. երերման [6] Ոմն. վերացման [7] Ոմն. խաղաղութեան նոցա, և ետու զնոսա [8] Ոմն. պատարագաց

[9] Ոմն. մերձեցուցանէր զնոսա ի քահանայանալ Տեառն [10] Ոմն. նուիրման և զոհին խաղաղութեան [11] Ոմն. նմա զշապիկն [12] Ոմն. զպարեգօտն [13] Ոմն. ժապաւէնիւ [14] Ոմն. զՈւրիմ և զԹումիմ, տե՛ս Ելք ԻԸ. 30 [15] Ոմն. զեւղն օծութեան՝ օծ զխորանն և զամենայն ինչ որ ի նմա և սրբեաց զնոսա. (11) Եւ սրսկեաց անտի ի վերայ սեղանոյն եւթն անգամ, և օծ զսեղանն և զամենայն սպաս նորա և զաւազանն և զխարիսխ նորա ի սրբել զնոսա

սպաս նորա, եւ զաւազանն եւ զխարիսխ
նորա, եւ սրբեաց զնոսա. եւ օծ զխո-
րանն եւ զամենայն ինչ որ ի նմա, եւ
12 սրբեաց զնա"։ Եւ արկ Մովսէս յիւղոյ
օծութեանն ի գլուխն Ահարոնի եւ օծ
13 զնա, եւ սրբեաց զնա։ Եւ մատոյց Մով-
սէս զորդիսն Ահարոնի եւ զգեցոյց նոցա
[1]զպատմուճանսն, եւ ած ընդ մէջ նոցա
զկամարսն, եւ [2]եդ նոցա զխոյրսն", որ-
պէս եւ հրամայեաց Տէր Մովսիսի։
14 Եւ մատոյց Մովսէս զզուարակն զվասն
մեղացն. եւ եդին Ահարոն եւ որդիք
նորա զձեռս իւրեանց ի վերայ գլխոյ
15 զուարակին մեղաց։ Եւ սպան զնա, եւ
առ Մովսէս յարենէ անտի, եւ եդ ի վե-
րայ եղջերաց սեղանոյն շուրջանակի մա-
տամբ իւրով, եւ սրբեաց զսեղանն. եւ
զարիւնն եհեղ առ յատակաւ սեղանոյն,
եւ սրբեաց զնա առնել քաւութիւն ի
16 վերայ նորա։ Եւ առ զամենայն ճարպ
փորոտւոյն, եւ զլերդաբոյթն եւ զեր-
կոսին զերիկամունսն, եւ զամենայն
ճարպն որ ի վերայ նոցա, եւ [3]եհան
17 Մովսէս ի սեղանն"։ Եւ զզուարակն եւ
զկաշի նորա եւ զմիսն եւ զապաւառն
այրեաց հրով արտաքոյ բանակին, որ-
պէս հրամայեաց Տէր Մովսիսի։
18 Եւ մատոյց Մովսէս զխոյն որ յողջա-
կէզ. եւ եդին Ահարոն եւ որդիք նորա
19 զձեռս իւրեանց ի վերայ գլխոյ խոյին։ Եւ
սպան [4]Մովսէս զխոյն, եւ եհեղ" զա-
20 րիւնն շուրջ զսեղանովն. Եւ զխոյն յօշեաց
անդամ անդամ. եւ [5]առ Մովսէս զգլուխն
21 եւ զանդամաթիւն եւ զճարպն. Եւ զքա-
ղիրթն եւ զոտսն լուաց ջրով. եւ [5]եհան
Մովսէս զխոյն ողջոյն [6]ի սեղանն ողջակէզ
ի հոտ անուշից, [7]քանզի պտուղ" Տեառն
է, որպէս հրամայեաց Տէր Մովսիսի։
22 Եւ մատոյց Մովսէս զխոյն երկրորդ,
զխոյն [8]կատարման, եւ եդին Ահարոն եւ
որդիք նորա զձեռս իւրեանց ի վերայ
23 գլխոյ խոյին. Եւ սպան զնա, եւ առ
Մովսէս յարենէ նորա, եւ եդ ի վերայ
բլթակի աջոյ ունկանն Ահարոնի, եւ ի
վերայ [9]ծայրի աջոյ ձեռին նորա, եւ ի
24 վերայ [9]ծայրի աջոյ ոտին նորա։ Եւ մա-
տոյց Մովսէս զորդիսն Ահարոնի, եւ եդ
Մովսէս յարենէ անտի ի վերայ բլթա-
կաց աջուց ականջաց նոցա, եւ ի վե-
րայ [10]ծայրից աջուց ձեռաց նոցա, եւ ի
վերայ [10]ծայրից աջուց ոտից նոցա. եւ
[11]եհեղ Մովսէս զարիւնն շուրջ զսեղա-
25 նովն։ Եւ առ զճարպն եւ [12]զմկանն, եւ
զճարպն որ ի վերայ քաղրթին, եւ
զլերդաբոյթն եւ զերիկամունսն զեր-
կոսին, եւ զճարպն որ ի վերայ նոցա,
26 եւ զերին աջոյ. Եւ ի խանէն [13]կա-
տարման որ կայր առաջի Տեառն՝ առ
սրան մի բաղարջ եւ պան մի յիւղոյ
[14]անտի, եւ եդ ի վերայ ճարպոյն եւ ի
27 վերայ երւոյն աջոյ. Եւ եդ զամենայն
ի վերայ ձեռացն Ահարոնի, եւ ի վերայ
ձեռաց որդւոց նորա, եւ [15]մատոյց զայն
28 նուէր" առաջի Տեառն։ Եւ առ զայն
Մովսէս ի ձեռաց նոցա, եւ [16]եհան ի
սեղանն յողջակէզ կատարման, որ է ի
հոտ անուշից պտուղ Տեառն, որպէս
29 պատուիրեաց Տէր"։ Եւ առեալ Մովսիսի
զկրծսն՝ [17]եհան նուէր" առաջի Տեառն
ի խոյէ անտի [18]կատարման. եւ" եղեւ
Մովսիսի ի մասն, որպէս պատուիրեաց
30 Տէր Մովսիսի։ Եւ առեալ Մովսիսի յիւ-
ղոյ օծութեանն, եւ յարենէն որ ի վե-
րայ սեղանոյն, ցանեաց զԱհարոնիւ
եւ զպատմուճանօք նորա, եւ զորդւովք
նորա եւ զպատմուճանօք նոցա. եւ
սրբեաց զԱհարոն եւ զպատմուճանս
նորա, եւ զորդիս նորա եւ զպատմու-
ճանս որդւոց նորա ընդ նմա։
31 Եւ ասէ Մովսէս ցԱհարոն եւ ցորդիս
նորա, Եփեցէք զմիսդ ի [19]սրահի խո-
րանին վկայութեան ի սուրբ տեղւոջ",
եւ անդ ուտիցէք զայն, եւ զհացն որ
ի խանի [8]կատարմանն իցեն, զոր օրի-
նակ հրամայեաց ինձ Տէր եւ ասէ, Ա-
հարոն եւ որդիք նորա կերիցեն զայն։
32 Եւ զնշխար հացի եւ մսոյ հրով այրես-
33 ջիք։ Եւ ի դրանէ խորանին վկայու-
թեան մի ելանիցէք զեւթն օր, մինչեւ
յօր լրման աւուրց կատարմանն ձերոյ.
34 զի զեւթն օր լցցէ զձեռս ձեր։ Որպէս
եւ արարն յաւուրն յայնմիկ, որպէս
պատուիրեաց Տէր առնել, առ ի քաւելոյ

[1]Եբր. զշապիկսն [2]Եբր. ած նոցա զապարօշսն [3]Եբր. այրեաց Մովսէս ի վերայ սեղանոյն [4]Եբր. եւ սրսկեաց Մովսէս [5]Եբր. այրեաց [6]Եբր. ի վերայ սեղանոյն [7]Եբր. պատարագ [8]Այսինքն, նուիրման. [9]Եբր. բութոյ

[10]Եբր. բութոց [11]Եբր. սրսկեաց [12]Եբր. զդմակն [13]Եբր. բաղարջոյ [14]Եբր. անտի և բաքար [15]Եբր. երերեաց զնոսա երերուծն [16]Եբր. այրեաց ի վերայ ողջակիզին որ ի սեղանին. սոքա են նուիրումն ի հոտ անուշից պատարագ Տեառն [17]Եբր. երերեաց զայն երերուծն [18]Այսինքն, նուիրման. այս [19]Եբր. դրան խորանին ժողովոյ

35 վասն ձեր։ Եւ առ դրան խորանին վկա-
յութեան նստջիք զեւթն օր, զցայգ եւ
զցերեկ, եւ պահեսջիք զպահպանութիւնս
Տեառն զի մի՛ մեռանիցիք. զի այնպէս
36 պատուիրեաց ինձ Տէր։ Եւ արար Ահա-
րոն եւ որդիք նորա զամենայն զբանս
զոր պատուիրեաց Տէր Մովսիսի։

## ԳԼ. Թ

1 Եւ եղեւ յաւուրն ութերորդի կոչեաց
Մովսէս զԱհարոն եւ զորդիս նորա եւ
2 զծերակոյտն Իսրայէլի. Եւ ասէ Մովսէս
ցԱհարոն, Ա՛ռ դու քեզ զուարակ մի
յանդոյ վասն մեղաց եւ խոյ յողջակէզ՝
անարատս. եւ մատո զնոսա առաջի
3 Տեառն։ Եւ ընդ [1]ծերակոյտն Իսրայէլի
խօսեցիս եւ ասասցես, Առէք դուք ձեզ
նոխազ մի յայծեաց վասն մեղաց, [2]եւ
խոյ՝ եւ զուարակ եւ գառն տարեւոր
4 յողջակէզ՝ անարատս. Եւ զուարակ եւ
խոյ՝ յողջակէզ [3]փրկութեան առաջի
Տեառն, եւ [4]զոհ նաշիհ զանգեալ իւղով.
զի այսօր երեւեսցի Տէր ի միջի ձե-
5 րում։ Եւ առին որպէս եւ հրամայեաց
Մովսէս առաջի խորանին վկայութեան.
եւ մատեան ամենայն ժողովուրդն եւ
6 կացին առաջի Տեառն։ Եւ ասէ Մով-
սէս, Այս բան է զոր ասաց Տէր առնել.
եւ երեւեսցին ի ձեզ փառք Տեառն։
7 Եւ ասէ Մովսէս ցԱհարոն, Մատիր առ
սեղանն, եւ արա զվասն մեղացն քո
եւ զողջակէզն քո, եւ քաւեա վասն
քո եւ [5]տան քո". եւ արա զպատարագս
ժողովրդեան [2]քո, եւ քաւեա վասն
նոցա, որպէս պատուիրեաց Տէր [2]Մով-
8 սիսի։ Եւ մատեաւ Ահարոն առ սեղանն,
եւ սպան զզուարակն զվասն մեղացն
9 իւրոց։ Եւ մատուցին որդիքն Ահարոնի
զարիւնն առ նա, եւ եթաց զմատն
յարեանն, եւ եդ ի վերայ եղջերաց սե-
ղանոյն, եւ զարիւնն եհեղ առ յատակս
10 սեղանոյն. Եւ զճարպն եւ զերիկամունսն
եւ զլերդապարյթն զվասն մեղացայոյն՝
[6]եհան ի սեղանն", որպէս պատուիրեաց
11 Տէր Մովսիսի։ Եւ զմիսն եւ զկաշին [7]այ-
12 րեցին հրով արտաքոյ բանակին։ Եւ
սպան զողջակէզն. եւ մատուցին որ-
դիքն Ահարոնի զարիւնն առ նա, եւ
13 [8]եհեղ շուրջ զսեղանովն։ Եւ զողջակէզն
մատուցին առ նա անդամ անդամ՝ եւ
14 զգլուխն, եւ [7]եդ ի վերայ սեղանոյն։ Եւ
լուաց զքաղիրթն եւ զոտսն ջրով, եւ
[7]եդ ի վերայ ողջակիզացն ի սեղանն։
15 Եւ [9]մատուցին զպատարագ ժողո-
վրրդեանն, եւ առ զնոխազն զվասն մե-
ղաց ժողովրդեանն եւ սպան [10]զնա իբրեւ
16 զառաջինն։ Եւ մատոյց զողջակէզն, եւ
17 արար զնա որպէս եւ օրէն էր։ Եւ մա-
տոյց [4]զզոհն, եւ էլից զձեռս ի նմանէ,
եւ [7]եդ ի վերայ սեղանոյն ուրոյն յա-
18 ռաւօտին ողջակիզէն։ Եւ սպան զզուա-
րակն եւ զխոյն զոհի [3]փրկութեան ժողո-
վրրդեանն, եւ մատուցին որդիքն Ահարոնի
զարիւնն առ նա, եւ [8]եհեղ զայն շուրջ
19 զսեղանովն։ Եւ զճարպն որ ի զուարա-
կէն եւ ի խոյէն [11]եւ զմկանն", եւ զճարպ
թաղանթ քաղրթին, եւ զերկասին եր-
կամուսն [2]ճարպովքն, եւ զլերդապարյթն.
20 Եւ եդին զճարպն ի վերայ երբծացն, եւ
[7]հանին զճարպն [2]հանդերձ երբծովքն,
եւ եդին զճարպն" ի վերայ սեղանոյն։
21 Եւ զերբուծն եւ զբազուկն զաջոյ [12]նուիր-
եաց նուէր" առաջի Տեառն, որպէս
պատուիրեաց [13]Տէր Մովսիսի"։
22 Եւ ամբարձեալ Ահարոնի զձեռս իւր
ի վերայ ժողովրդեանն՝ օրհնեաց զնոսա.
եւ էջ [14]արար զվասն մեղացն եւ զող-
23 ջակէզսն եւ [15]զփրկութեանն։ Եւ մտին
Մովսէս եւ Ահարոն ի խորանն վկայու-
թեան, եւ ելեալ անտի օրհնեցին զամենայն
ժողովուրդն. եւ երեւեցան փառք Տեառն
24 ամենայն ժողովրդեանն։ Եւ ել հուր ի
Տեառնէ, եւ եկեր որ ինչ կայր ի վերայ
սեղանոյն, զողջակէզն եւ զճարպն. եւ
ետես ամենայն ժողովուրդն եւ զարհուրե-
ցաւ, եւ անկան ի վերայ երեսաց իւրեանց։

## ԳԼ. Ժ

1 Եւ առեալ երկուց որդւոցն Ահարոնի,
Նաբադայ եւ Աբիուդայ, զիւրաքանչիւր
բուրուառ՝ եդին ի նոսա հուր, եւ ար-
կին խունկս եւ մատուցին առաջի Տեառն
հուր օտար, զոր ոչ հրամայեաց նոցա
2 Տէր։ Եւ ել հուր ի Տեառնէ եւ եկեր
3 զնոսա, եւ մեռան առաջի Տեառն։ Եւ ասէ
Մովսէս ցԱհարոն, Այս է զոր ասաց Տէր.

[1]Եբր. որդւոց [2]Եբր. [illegible] [3]Եբր. խաղաղութեան [4]Տե՛ս Գլ. Բ. 4։ [5]Եբր. վասն ժողովրդեան [6]Եբր. այրեաց ի վերայ սեղանոյն [7]Եբր. այրեաց

[8]Եբր. սրսկեաց [9]Եբր. մատոյց [10]Եբր. զնա և արար զնա վասն մեղաց [11]Եբր. զգմակն [12]Եբր. երերեաց երերումն [13]Եբր. Մովսէս [14]Եբր. յետ մատուցանելոյ [15]Եբր. զխաղաղութեանն

*ասէ, ի մերձաւորս իմ սրբեցայց, եւ*
*առաջի ամենայն ժողովրդեան իմոյ փա-*
*ռաւորեցայց. եւ սարջացաւ Ահարոն։*
4 *Եւ կոչեաց Մովսէս զՄիսադայէ եւ զԵ-*
*ղիսափան, զորդիս Ոզիելի, զորդիս հօր-*
*եղբօր Ահարոնի, եւ ասէ ցնոսա, Մա-*
*տիք եւ բարձէք զեղբարս ձեր, [1]հան-*
*դերձ պատմուճանօքն իւրեանց" յերեսաց*
*սրբութեանցդ արտաքոյ քան զբանակն։*
5 *Մատեան եւ բարձին զնոսա հանդերձ*
*պատմուճանօքն իւրեանց արտաքոյ բա-*
*նակին, զոր օրինակ ասաց Մովսէս։*
6 *Եւ ասէ Մովսէս ցԱհարոն եւ ցԵղիա-*
*զար եւ ցԻթամար ցորդիս նորա [1]մնաց-*
*եալս, Զգլուխս ձեր մի ապախուրէք, եւ*
*զհանդերձս ձեր մի պատառէք, զի մի մե-*
*ռանիցիք, եւ ի վերայ ժողովրդեանդ լի-*
*նիցի բարկութիւն, բայց եղբարք ձեր եւ*
*ամենայն տունն Իսրայելի լացցեն զհրայր-*
7 *եցումն որ այրեցան ի Տեառնէ։ Եւ ի*
*դրանէ խորանին վկայութեան մի ելա-*
*նիցէք, զի մի մեռանիցիք. զի եւղն*
*օծութեան որ ի Տեառնէ է՝ ի վերայ ձեր*
*է. եւ արարին ըստ բանին Մովսիսի։*
8 *Խօսեցաւ Տէր ընդ Ահարոնի եւ ասէ,*
9 *Գինի եւ ցքի մի ըմպիցէք դու եւ որ-*
*դիք քո ընդ քեզ յորժամ մտանիցէք ի*
*խորանն վկայութեան, [1]կամ յորժամ*
*մերձենայցէք ի սեղանն," զի մի մե-*
*ռանիցիք. օրէնս յաւիտենական յազգս*
10 *ձեր, Զատանել ի մէջ սրբոց եւ պղծոց,*
*եւ ի մէջ պարկեշտից եւ անպարկեշտից.*
11 *Եւ իմացուցանել որդւոցն Իսրայելի զա-*
*մենայն զօրէնս զոր խօսեցաւ Տէր ընդ*
*նոսա ի ձեռն Մովսիսի։*
12 *Եւ ասէ Մովսէս ցԱհարոն եւ ցԵղի-*
*ազար եւ ցԻթամար ցորդիս նորա ցմնաց-*
*եալս, Առէք [2]զպոհն մնացեալ ի պտղոց*
*անտի Տեառն, եւ կերայք բաղարջ ա-*
*ռաջի սեղանոյն. զի սրբութիւն սրբու-*
13 *թեանց է։ Եւ կերիջիք զայն ի սուրբ*
*տեղւոջ, զի օրէն քեզ լինիցի այն, եւ*
*օրէն որդւոց քոց ի պտղոց անտի Տեառն.*
14 *զի այնպէս հրամայեալ է ինձ։ Եւ*
*[3]զերբուծ զնուիրին եւ զերրի հասին" կե-*
*րիջիք ի սուրբ տեղւոջ դու եւ որդիք*
*քո եւ [4]տուն քո ընդ քեզ. զի օրէն քեզ*
*է այն, եւ օրէն որդւոց քոց տուաւ ի*
*զոհից [5]փրկութեան որդւոցն Իսրայելի։*

15 *Զերին [6]զհասի եւ զերբուծն [7]նուիրի ի*
*վերայ ընծայից" ճարպոյն մատուսցեն*
*[8]նուէրնուիրել" առաջի Տեառն. եւ եղիցի*
*քեզ եւ որդւոց քոց եւ դստերաց քոց*
*ընդ քեզ՝ օրէն յաւիտենական, զոր օրի-*
*նակ հրամայեաց Տէր [1]Մովսիսի։*
16 *Եւ զնոխազն զվասն մեղաց խնդրե-*
*լով խնդրեաց Մովսէս, եւ այն էր այ-*
*րեցեալ. եւ բարկացաւ Մովսէս Եղիա-*
*զարու եւ Իթամարայ որդւոցն Ահարոնի*
17 *մնացելոց եւ ասէ, Ընդէ՞ր ոչ կերայք*
*զվասն մեղացն ի սուրբ տեղւոջ. զի*
*սրբութիւն սրբութեանց է, եւ զայն*
*ետ ձեզ ուտել, զի բառնայցէք զմեղս*
*ժողովրդեանն. եւ առնիցէք քաւութիւն*
18 *վասն նոցա առաջի Տեառն։ Քանզի ոչ*
*եմուտ յարենէ նորա ի սրբութիւնն*
*[1]յանդիման երեսացն" ի ներքս. [9]արդ կե-*
*րայք" զնա ի սուրբ տեղւոջ՝ զոր օրի-*
19 *նակ հրամայեցաւ ինձ։ Խօսեցաւ Ահա-*
*րոն ընդ Մովսիսի եւ ասէ, Զի եթէ*
*այսօր մատուցին զվասն մեղացն իւր-*
*եանց եւ զողջակէզս իւրեանց առաջի*
*Տեառն, եւ այսպիսի անցք անցին ընդ*
*իս. եւ ուտիցեմ այսօր զվասն մեղացն,*
20 *դուցէ չլինիցի հաճոյ առաջի Տեառն։ Եւ*
*լուաւ Մովսէս եւ հաճոյ թուեցաւ նմա։*

## ԳԼ. ԺԱ

1 *Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ*
2 *Ահարոնի եւ ասէ, Խօսեցարուք ընդ*
*որդիսդ Իսրայելի եւ ասացէք, Այս ա-*
*նասունք են զոր ուտիցէք յամենայն ա-*
3 *նասնոց որ են ի վերայ երկրի։ Զամե-*
*նայն անասուն թաթահերձ եւ կճղակաւոր*
*որոյ յերկուս բաժանեալ իցեն թաթքն*
*եւ որոճիցէ, յանասնոց՝ զայն կերիջիք։*
4 *Բայց յայնցանէ մի ուտիցէք, որք որո-*
*ճիցեն եւ կճղակահերձ ոչ իցեն. ուղտ*
*զի որոճայ եւ կճղակն ոչ բաժանի, պիղծ*
5 *իցէ նա ձեզ։ Եւ նապաստակ զի որոճայ*
*եւ թաթն ոչ բաժանի, պիղծ իցէ նա*
6 *ձեզ։ Եւ ճագար զի որոճայ եւ թաթն*
7 *ոչ բաժանի, պիղծ իցէ նա ձեզ։ Եւ խոզ*
*զի թաթահերձ է եւ կճղակս ունի եւ*
8 *որոճայ ոչ, պիղծ իցէ նա ձեզ։ Ի մսոյ*
*նոցա մի ուտիցէք, եւ ի գէշ նոցա մի*
*մերձենայցէք. քանզի պիղծ իցէ ձեզ այն։*
9 *Եւ այս է զոր ուտիցէք յամենայնէ որ*

---

[1]Եբր. զոխոխ. [2]Տես. Գլ. Բ. 4։ [3]Եբր. զերբուծն երերման և զբրին վերացման [4]Եբր. դստերք [5]Եբր. խաղաղութեան

[6]Եբր. վերացման [7]Եբր. երերման հանդերձ պատարագօք [8]Եբր. յերերումն երերման [9]Եբր. պարտ էր ձեզ ուտելով ուտել

ի ջուրս իցեն. ամենայնի որոյ իցեն թեւք
եւ թեփ ի ջուրս եւ ի ծովս եւ ի վտակս,
10 զայնս ուտիցէք։ Եւ ամենայնի որոյ ոչ
իցեն թեւք եւ թեփ [1]ի ջուրս եւ" ի ծովս
եւ ի վտակս, մի ուտիցէք, յամենայնէ զոր
ջուրքն բղխիցեն, եւ յամենայն շնչոյ
կենդանւոյ որ ի ջուրս. քանզի պիղծ է
11 այն, պիղծ լինիցի ձեզ։ Ի մսոց նոցա մի
ուտիցէք, եւ ի մեռելոց նոցա զարշեսջիք։
12 Զի ամենայնի որոյ ոչ իցեն թեւք եւ թեփ
որ ի ջուրս իցեն, պիղծ իցէ ձեզ այն։
13 Եւ այս իցեն ի թռչնոց յորոց զար-
շիջիք, եւ ոչ ուտիցի, այլ պիղծ իցէ ձեզ.
արծուի, եւ պասկուճ, եւ գետարծուի,
14 Եւ անգղ, եւ ցին, [2]եւ որ ինչ նման իցէ
15 նոցա", Եւ ագռաւ, եւ որ ինչ նման ի-
16 ցէ նմա, Եւ ջայլեամն, եւ բու, եւ որոր,
եւ որ ինչ նման իցէ նոցա, եւ բազէ,
17 եւ որ ինչ նման իցէ նմա, Եւ հաւապա-
18 տիր, եւ հողամաղ, եւ քաջահաւ, Եւ
19 սոխակ, եւ հաւալուսն, եւ կարապ, Եւ
արագիլ, եւ քարադր, եւ որ ինչ նման
իցէ նոցա, եւ յոպոպ, եւ չղջիկ։
20 Եւ ամենայն զեռուն թռչուն որ գը-
21 նայցէ ի չորս՝ պիղծ եղիցի ձեզ։ Այլ
զայն ուտիցէք ի զեռնոց թռչնոց որ
գնայցեն ի չորս, որոց իցեն կարթք ի
վերոյ քան զոտս ոստոստել նոքօք յերկ-
22 րէ։ Եւ այս իցէ զոր ուտիցէք ի նոցանէ.
զջորեակն, եւ որ ինչ նման է նմա. եւ
զխարագուլ, եւ որ ինչ նման է նմա.
եւ զմարախ, եւ որ ինչ նման է նմա. եւ
զօձամարտ, եւ որ ինչ նման իցէ նմա։
23 Ամենայն զեռուն թռչուն, որոյ իցեն
24 չորք ոտք, պիղծ իցէ ձեզ. Մի նոքօք
պղծիցիք. ամենայն որ մերձենայցէ ի
մեռեալ նոցա՝ պիղծ լիցի մինչեւ ցերե-
25 կոյ։ Եւ ամենայն որ բառնայցէ զմեռ-
եալ նոցա, լուասցէ զձորձս իւր, եւ
25 պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ։ Յամենայն
անասնոց որ կճղակահերձ իցէ եւ մա-
գիլս սփռիցէ եւ որոճիցէ ոչ, պիղծ լիցի
ձեզ այն ամենայն. որ մերձեսցի ի մեռ-
եալ նոցա՝ պիղծ լիցի [1]մինչեւ ցերեկոյ"։
27 Եւ ամենայն որ գնայցէ ի ձեռս իւր,
յամենայն գազանաց որ գնայցէ ի չորս,
պիղծ լիցի ձեզ այն. ամենայն որ մեր-
ձեսցի ի մեռեալ նոցա՝ պիղծ լիցի մին-
28 չեւ ցերեկոյ։ Եւ որ բառնայցէ ի մեռե-
լոյ նոցա, լուասցէ զձորձս իւր, եւ
պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ. զի այն
ամենայն պիղծ իցէ ձեզ։
29 Եւ այս իցէ ձեզ պիղծ յամենայն սող-
նոց որ սողիցեն ի վերայ երկրի. աքիս եւ
30 մուկն եւ [3]տիտեռն յազգս իւր", Եւ մկնաքիս
եւ գետնառեւծ եւ կոխակիաց եւ մողէզ
31 եւ խլուրդ։ Այն ամենայն պիղծ իցէ ձեզ
յամենայն սողնոց որ սողեն ի վերայ երկրի.
ամենայն որ մերձեսցի ի մեռեալ նոցա՝
պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ։
32 Եւ յամենայնի յորոյ վերայ անկանիցի
ի մեռելոյ նոցա՝ պիղծ լիցի. յամենայն
փայտեղէն անօթոյ կամ ի հանդերձէ կամ
ի մաշկէ կամ ի քրձէ, ամենայն անօթ
յորում գործ ինչ գործիցի ի նմա, ի ջուր
թացցի եւ պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ,
33 եւ ապա սուրբ լինիցի։ Եւ ամենայն
անօթ խեցեղէն յոր անկանիցի ինչ ի նո-
ցանէ, եւ որ ինչ ի ներքսն կայցէ, պիղծ
34 լիցի, եւ զայն բեկանիջիք։ Եւ ամե-
նայն կերակուր որ ուտիցի, եւ անկա-
նիցի ի վերայ նորա ի ջրոյ անտի, պիղծ
լիցի. եւ ամենայն ըմպելի որ ըմպիցի յա-
35 մենայն ամանի՝ պիղծ լիցի։ Եւ ամենայն
յոր ինչ անկանիցի ի մեռելոյ նոցա՝ պիղծ
լիցի. եւ թոնիրք եւ կասկարայք քա-
կեսցին. քանզի պղծեալ են, եւ պիղծք
36 իցեն ձեզ։ Բայց [4]յաղբերաց ջրոց եւ ի
ջրհորոց եւ ի ջրախուսաց, որ" սուրբ
լինիցին ձեզ, եւ ամենայն որ մերձենայցէ
[5]ի պղծութիւնս շնչոյ մեռելոյ" նոցա, պիղծ
37 լիցի։ Իսկ եթէ անկանիցի ինչ ի մեռե-
լոյ նոցա ի վերայ ամենայն սերման
սերմանելոյ որ սերմանիցի, սուրբ լիցի։
38 Ապա թէ հեղուցու ջուր ի վերայ ամե-
նայն սերման, եւ անկանիցի ինչ անդր
ի մեռելոյ նոցա, անսուրբ լիցի ձեզ։
39 Եւ եթէ մեռանիցի ինչ յանասնոց որ
ձեզ ուտելի են, որ մերձենայցէ ի մեռեալ
40 նոցա՝ պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ։ Եւ [6]որ
բառնայցէ ի մեռելոյ նոցա՝ լուասցէ զձորձս
իւր, եւ պղծեալ լիցի մինչեւ ցերեկոյ։
41 Եւ ամենայն սողուն որ սողի ի վե-
րայ երկրի, պիղծ լիցի ձեզ, եւ մի կե-
42 րիցի։ Ամենայն որ սողի ի վերայ որո-
վայնի իւրոյ, եւ ամենայն որ գնայցէ
ի չորս, մինչեւ ցամենայն բազմոտանիս,
յամենայն զեռնոց որ զեռայցեն ի վերայ

[1]Յ Եբր. պոխոսէ [2]Եբր. ըստ ազգի իւրում. այս-
պէս և է Ներքոյ

[3]Եբր. տիտեռն ըստ ազգի իւրում [4]Եբր. աղ-
բեւրք և գուբք, ջրակոյտք [5]Եբր. ի մեռելոտի
[6]Եբր. որ ուտիցէ ի մեռելոյ նոցա՝ լուասցէ զձորձս
իւր և պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ, և որ

երկրի, մի՛ ուտիցէք. զի պիղծ է այն
43 ձեզ. Եւ մի՛ գարշելուցանիցէք զանձինս
ձեր ամենայն սողնովք որ սողիցին ի
վերայ երկրի. եւ մի՛ պղծիցիք նոքօք,
44 եւ մի՛ լինիցիք անսուրբ նոքօք։ Ես եմ
Տէր Աստուած ձեր. եւ սրբիցիք եւ
սուրբք լինիցիք, զի սուրբ եմ ես [1]Տէր
Աստուած ձեր". եւ մի՛ պղծիցէք զան-
ձինս ձեր ամենայն զեռնովք որ շարժի-
45 ցին ի վերայ երկրի։ Զի ես եմ Տէր
[1]Աստուած որ հանի զձեզ յերկրէն Ե-
գիպտացւոց լինել ձեզ Աստուած, եւ
եղիջիք սուրբք, զի ես սուրբ եմ։
46 Այս օրէն լինիցի վասն անասնոց եւ
թռչնոց եւ ամենայն շնչոյ որ շրջիցի ի
ջուրս, եւ ամենայն շնչոյ որ շրջիցի ի վե-
47 րայ երկրի. Որոշել ի մէջ սրբոյն եւ ի մէջ
անսրբոյն, եւ խելամուտ առնել զոր-
դիսդ Իսրայէլի ի մէջ ուտելեացն կեն-
դանեաց եւ ի մէջ չուտելեաց անասնոց։

Գլ. ԺԲ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ,
2 Խօսեաց ընդ որդիսն Իսրայէլի եւ ա-
սասցես ցնոսա, Կին որ եթէ սերմն առ-
ցէ եւ ծնանիցի արու, պիղծ լիցի զեւթն
օր. ըստ աւուրց զատանելոյ դաշտանին
3 իւրոյ պիղծ լիցի. Եւ յաւուրն ութե-
րորդի թլփատեսցէ զմարմին անթլփա-
4 տութեան նորա։ Եւ զերեսուն եւ զերիս
աւուրս նստցի ի սրբութեան արեան
իւրոյ. յամենայն ինչ սուրբ նա մի՛ մեր-
ձենայցէ, եւ ի սրբութիւնն մի՛ մտցէ,
մինչեւ լցցին աւուրք սրբութեան նորա։
5 Ապա թէ էգ ծնանիցի, պիղծ լիցի [2]զեւթն
օր" ըստ դաշտանին, եւ զվաթսուն եւ
զվեց օր նստցի [3]ի սուրբ արեանն իւ-
6 րում"։ Եւ յորժամ լնուցուն աւուրք
սրբութեան նորա ի վերայ ուստերն կամ
դստերն, ածցէ գառն տարեւոր յողջակէզ,
եւ [4]զձագս աղաւնեաց կամ տատրակի" վասն
մեղաց ի դուռն խորանին վկայութեան
7 առ քահանայն, Եւ մատուսցէ առաջի
Տեառն, եւ քաւեսցէ վասն նորա քա-
հանայն, եւ սրբեսցէ զնա յաղբերէ արեան
նորա։ Այս օրէն իցէ այնորիկ որ ծնանիցի
8 արու կամ էգ։ Ապա թէ ոչ գտանիցէ
ձեռն նորա բաւական լինել գառամբ,
առցէ երկուս տատրակս կամ երկուս
ձագս աղաւնեաց. զմին յողջակէզ եւ
զմիւսն վասն մեղաց, եւ քաւեսցէ վասն
նորա քահանայն, եւ սրբեսցի։

Գլ. ԺԳ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ընդ
2 Ահարոնի եւ ասէ, Մարդոյ ուրուք եթէ
լինիցի ի մորթ մարմնոյ իւրոյ նշան
սպւոյ, կամ պալար, կամ պաղպաջ,
եւ լինիցի ի մորթ մարմնոյ նորա արած
բորոտութեան, եկեսցէ առ Ահարոն
քահանայ, կամ առ մի յորդւոց նորա
3 քահանայից։ Եւ տեսցէ քահանայն զա-
րածն ի մորթ մարմնոյ նորա, եւ [1]կամ թէ"
մազ արածին ի սպիտակ դարձեալ իցէ,
եւ տեսիլ արածին զնստագոյն իցէ քան
զմորթ մարմնոյն, արած բորոտութեան
է. եւ տեսցէ քահանայն եւ [5]պղծեսցէ
4 զնա"։ Ապա թէ պալարաջն սպիտակ իցէ
ի մորթ մարմնոյ նորա, եւ զնստագոյն
չիցէ տեսիլ նորա քան զմորթն, եւ
մազն ի սպիտակ չիցէ դարձեալ, [1]եւ
ինքն չլաղոյն իցէ," զատուսցէ քահա-
5 նայն զարածն զեւթն օր։ Եւ տեսցէ
քահանայն յաւուրն եւթներորդի, եթէ
կայցէ նոյնպէս արածն առաջի նորա,
եւ չիցէ [6]փոխեալ արածն ի մորթն, զա-
տուսցէ զնա քահանայն այլ եւս աւուրս
6 եւթն։ Եւ տեսցէ քահանայն յաւուրն
եւթներորդի միւս անգամ, եւ ահա չլա-
ղոյն իցէ արածն, եւ [1]յայլադոյն չիցէ [6]փոխ-
եալ ի մորթն, [7]սրբեսցէ զնա" քահանայն.
զի [8]նշան ինչ" է այն. եւ լուացեալ զձորձս
7 իւր եղիցի սուրբ։ Ապա թէ [9]շրջելով
շրջեսցի նշանն" ի մորթն յետ տեսանե-
լոյ զնա քահանային եւ սրբելոյ, եւ ե-
8 րեւեսցի միւս անգամ քահանային։ Եւ
տեսցէ քահանայն, եւ ահա [10]այլագուն-
եալ իցէ նշանն" ի մորթն, պղծեսցէ զնա
քահանայն, զի բորոտութիւն է։
9 Եւ արած բորոտութեան եթէ լինիցի
մարդոյ, [11]եկեսցէ առ Ահարոն քահանայ".
10 Եւ տեսցէ քահանայն. եւ ահա պալար
սպիտակ իցէ ի մորթն, եւ մազ նորա
ի սպիտակ դարձեալ իցէ, եւ [12]յառողջ
11 եւ ի կենդանի մարմնոյ ի պալար", Բո-

[1] Եբր. Եհովա [2] Եբր. երկուս եւթներորդս [3] Եբր. ի վերայ արեան սրբութեանն [4] Եբր. ձագ աղաւնեաց կամ տատրակ

[5] Ի՛մա՝ ծանուսցէ թէ պիղծ է [6] Եբր. տարածեալ [7] Ի՛մա՝ ծանուսցէ թէ սուրբ է [8] Եբր. քոս [9] Եբր. տարածելով տարածեսցի քոսն [10] Եբր. տարածեալ իցէ քոսն [11] Եբր. տարցի առ քահանայն [12] Եբր. առողջութիւն մսոյ կենդանւոյ ի պալարի անդ

բոտութիւն հնացեալ իցէ ի մորթ մարմ-
նոյ նորա. պղծեսցէ զնա քահանայն,
եւ [1]զատուսցէ զնա զի պիղծ է։
12 Ապա թէ սփռելով սփռեսցի բորոտու-
թիւնն ընդ մորթն, եւ ծածկեսցէ բորո-
տութիւնն զամենայն մորթ խտանայն ի
գլխոյ մինչեւ ցոտս, ըստ ամենայն տեսոյ[2]
13 քահանային, Եւ տեսանիցէ քահանայն
եւ ահա ծածկեաց բորոտութիւնն զա-
մենայն մորթ մարմնոյն, [3]սրբեսցէ քա-
հանայն զարածն. քանզի ամենայն ի
14 սպիտակ դարձաւ, սուրբ է։ Եւ յորում
աւուր երեւեսցի ի նմա մարմին կենդանի,
15 պղծեսցի։ Եւ տեսցէ քահանայն զմար-
մինն կենդանի, եւ պղծեսցէ զողջ մար-
մինն. եւ պիղծ լիցի, քանզի բորոտու-
16 թիւն է։ Ապա թէ անցցէն հաստա-
տեսցի մարմինն ողջ եւ դարձցի ի սպի-
17 տակ, եկեսցէ առ քահանայն. Եւ տե-
սանիցէ զնա քահանայն, եւ ահա դարձ-
եալ իցէ արածն նորա ի սպիտակ, սրբեսցէ
քահանայն զարածն. քանզի սուրբ է։
18 Եւ մարդոյ եթէ լինիցի ի մորթ նորա
19 կեղ եւ ողջասցի, Եւ եղիցի ի տեղի կեղոյն
սպիտակ փայլուն, լմնացեալ կամ կար-
20 մրացեալ, եւ երեւեսցի քահանային։ Եւ
տեսանիցէ քահանայն, եւ ահա տեսիլն
խորագոյն քան զմորթն իցէ, եւ մազն ի
սպիտակ դարձեալ իցէ, պղծեսցէ զնա
քահանայն. զի բորոտութիւն է ընդ կեղոյն
21 բորբոքեալ։ Իսկ եթէ տեսանիցէ քահա-
նայն եւ չիցէ ի նմա մազ սպիտակ, եւ ոչ
խորագոյն իցէ քան զմարմինն, եւ ինքն
շլագոյն իցէ, զատուսցէ զնա քահանայն
22 զեւթն օր։ Եթէ սփռեսցի ընդ մորթն,
պղծեսցէ զնա քահանայն. քանզի արած
[4]բորոտութեան ընդ կեղոյն բորբոքեցաւ"։
23 Ապա եթէ անդէն ի տեղւոջ կացցէ փայ-
լիւնն եւ ոչ տարածեսցի, սպի կեղոյն
է. սրբեսցէ զնա քահանայն։
24 Եւ մարմնոյ եթէ լինիցի ի մորթ նո-
րա այրեցած հրոյ, եւ լինիցի ողջաց-
եալ մորթ նորա յայրեցածէ անտի, եւ
լինիցի տեղի այրեցածին փայլուն կամ
պաղպաջ սպիտակ, կամ կարմրացեալ,
25 կամ լմնացեալ, Եւ տեսանիցէ զնա քա-
հանայն, եւ ահա փոխեալ իցէ մազն ի
սպիտակ ի փայլուն, եւ տեսիլ նորա
դիջագոյն իցէ քան զմորթն, բորոտու-
թիւն է ընդ այրեցածին բորբոքեալ. եւ
պղծեսցէ զնա քահանայն, զի արած
26 բորոտութեան է։ Եւ եթէ տեսանիցէ
քահանայն, եւ ահա չիցէ ի նմա փայ-
լիւն ինչ կամ մազ սպիտակ, եւ ոչ
զնստագոյն քան զմորթն, բայց շլագոյն
իցէ, զատուսցէ զնա քահանայն զեւթն
27 օր։ Եւ տեսցէ զնա քահանայն յաւուրն
եւթներորդի, եթէ սփռելով սփռեալ ի-
ցէ ընդ մորթն, պղծեսցէ զնա քահա-
նայն. զի արած բորոտութեան է [5]ընդ
28 կեղոյն բորբոքեալ"։ Եւ եթէ ի նմին
տեղւոջ կացցէ փայլիւնն եւ ոչ սփռես-
ցի ընդ մորթն, եւ ինքն շլագոյն իցէ,
սպի այրեցածոյն է. սրբեսցէ զնա քա-
հանայն. զի դրոշմ այրեցածոյն է։
29 Եւ առն կամ կնոջ՝ եթէ լինիցի արած
[5]բորոտութեան ի գլուխ կամ ի մօրուս,
30 Եւ տեսանիցէ քահանայն զարածն, եւ
ահա տեսիլ նորա զնստագոյն իցէ քան
զմորթն, եւ ի նմա մազ ազուամազ խար-
տեաշացեալ, պղծեսցէ զնա քահանայն.
քանզի [6]հարած է, բորոտութիւն գլխոյ է,
31 կամ բորոտութիւն մօրուաց։ Եւ եթէ
տեսանիցէ քահանայն զարած հարածոյն,
եւ ահա չիցէ զնստագոյն տեսիլն քան
զմորթն, եւ ոչ մազ [7]խարտեաշացեալ ի
նմա, զատուսցէ քահանայն զարած հա-
32 րածին զեւթն օր։ Եւ տեսանիցէ քահա-
նայն զարածն յաւուրն եւթներորդի. եւ
ահա չիցէ տարածեալ հարածն ընդ մորթն,
եւ մազ խարտեաշացեալ չիցէ ի նմա, եւ
ոչ տեսիլ հարածոյն զնստագոյն իցէ
33 քան զմորթն, [8]Գերծցէ զնա", բայց զհա-
րածն մի՛ գերծցէ. եւ զատուսցէ քահա-
նայն զարածն զեւթն օր կրկին անգամ։
34 Եւ տեսանիցէ քահանայն զարածն յա-
ւուրն եւթներորդի. եւ ահա չիցէ սփռեալ
հարածն ընդ մորթն [5]յետ գերծանելոյն
զնա", եւ տեսիլ հարածոյն չիցէ զնստա-
գոյն քան զմորթն, սրբեսցէ զնա քա-
հանայն. եւ լուացեալ զձորձս իւր՝ եղիցի
35 սուրբ։ Ապա թէ սփռելով սփռեսցի
հարածն ընդ մորթն յետ [9]գերծելոյն զնա,
36 Եւ տեսանիցէ զնա քահանայն. եւ ահա
սփռեալ իցէ հարածն ընդ մորթն, մի՛
զարմանեսցէ քահանայն վասն խարտեաշ
37 մազոյն, զի պիղծ է։ Իսկ եթէ կայցէ
ի տեղւոջ հարածն, եւ մազ թուխ

[1] Եբր. մի՛ փակեսցէ [2] Եբրայեցին յաւելու. աչաց
[3] Խմ.՝ ծանուսցէ թէ սուրբ է, այսպէս եւ այլուր
[4] Եբր. է այն

[5] Յեբր. [illegible] [6] Եբր. զանջութիւն, այսպէս եւ ստորեւ [7] Եբր. թուխ [8] Եբր. Գերծցի
[9] Եբր. սրբեսցին

ելեսցէ ի նմա, ողջացաւ հարածն. սուրբ
է, եւ սրբեսցէ զնա քահանայն։
38 Եւ առն կամ կնոջ եթէ լինիցի ի
մորթ մարմնոյ խարոյ փայլուն ինչ փայ-
39 լածուն լինացեալ, Եւ տեսանիցէ քահա-
նայն, եւ ահա ի մորթ մարմնոյ նորա փայ-
լուն փայլածուն լինացեալ, թեփուկ է տա-
րածեալ ի մորթ մարմնոյ խարոյ. սուրբ է։
40 Եւ եթէ մաշտեսցի գլուխ ուրուք՝
41 կունտ է, սուրբ է։ Եւ եթէ յերեսաց
կողմանէ մաշտիցի գլուխ նորա՝ ճաղ է,
42 սուրբ է։ Ապա թէ լինիցի ի կնտութեան
նորա կամ ի ճաղութեան արած սպիտակ
կամ կարմրացեալ, բորոտութիւն թա-
քուցեալ է ի կնտութեան նորա կամ ի
43 ճաղութեան։ Եւ տեսանիցէ զայն քա-
հանայն. եւ ահա տեսիլ արածին սպի-
տակ իցէ կամ կարմրագոյն ի կնտու-
թեան նորա կամ ի ճաղութեան, իբրեւ
զտեսիլ բորոտութեան ի մորթ մարմնոյ
44 նորա, Այր բորոտեալ է, պիղծ է.
պղծելով պղծեսցէ զնա քահանայն. զի ի
գլուխ իւրում է արածն իւր։
45 Եւ բորոտ յորում իցէ արած, հան-
դերձ նորա քակեալ լիցի, եւ գլուխ նո-
րա մերկ, եւ զբերան իւր պատեսցէ,
46 եւ [1]պիղծ կոչեսցի՝։ Զամենայն աւուրս
որչափ իցէ ի նմա արածն, պիղծ եղիցի.
եւ պիղծ է, մեկնեալ նստցի. եւ արտա-
քոյ բանակին եղիցի բնակութիւն նորա։
47 Եւ ձորձ յորում լինիցի արած բորո-
տութեան, եթէ ի ձորձ ասուի, եթէ ի
48 ձորձ կտաւի, Եթէ յառէջ, եթէ ի թե-
զան, եթէ ի կտաւս եւ եթէ յասուս,
եթէ ի մորթ եւ եթէ յամենայն մաշկ
49 գործոյ, Եւ լինիցի արած կանաչացեալ
կամ կարմրացեալ՝ ի մորթ կամ ի հան-
դերձ, կամ յառէջ կամ ի թեզան, կամ
յամենայն մորթ գործոյ, կամ յանօթ
ինչ, արած բորոտութեան իցէ, եւ
50 ցուցցէ քահանային։ Եւ տեսցէ քահա-
նայն զարածն, եւ զատուսցէ քահանայն
51 զարածն զեւթն օր։ Եւ տեսցէ քահա-
նայն զարածն յաւուրն եւթներորդի.
եթէ սփռեալ իցէ արածն ընդ ձորձն
կամ ընդ առէջ կամ ընդ թեզան կամ
[2]ընդ կտաւս կամ ընդ ասուս կամ՝ ընդ
մորթ, ըստ ամենայնի որպէս եւ գոր-
ծիցի մորթ ի գործ, [3]բնակ բորոտու-
52 թիւն է արածն. պիղծ է։ Եւ այրեսցէ
զձորձն եթէ առէջ իցէ, եւ եթէ թե-
զան, յասուեաց կամ ի կտաւեաց կամ
յամենայն մաշկեղէն նիւթոյ, յորում
իցէ արածն. քանզի [3]բնակ բորոտութիւն
53 է, հրով այրեսցի։ Ապա թէ տեսանիցէ
քահանայն եւ չիցէ սփռեալ հարածն
ընդ հանդերձն կամ ընդ առէջն կամ ընդ
թեզանն կամ ընդ [2]ասրն կամ ընդ կը-
տաւն կամ ընդ՝ ամենայն անօթ մաշ-
54 կեղէն, Հրաման տացէ քահանայն, եւ
լուասցեն յորում իցէ արածն. եւ զա-
տուսցէ քահանայն զարածն զեւթն օր
55 երկիցս անգամ։ Եւ տեսցէ քահանայն
յետ լուանալոյ զարածն. եթէ չիցէ
փոխեալ տեսիլ արածին, եւ ոչ սփռեալ
իցէ արածն, պիղծ է, հրով այրեսցի.
[4]զի հաստատեալ է ի հանդերձին կամ
56 յառէջն կամ ի թեզան՝։ Եւ եթէ տե-
սանիցէ քահանայն եւ չլագոյն իցէ ա-
րածն յետ լուանալոյն զնա, պատա-
ռեսցէ զայն ի հանդերձէ անտի կամ ի
մորթոյն կամ յառիջէ կամ ի թեզանոյ։
57 Ապա թէ դարձեալ երեւեսցի ի հանդեր-
ձին կամ յառէջ կամ ի թեզան կամ
յամենայն անօթ մաշկեղէն, բորոտու-
թիւն բողբոջեալ է. հրով այրեսցի յո-
58 րում իցէ արածն։ Եթէ հանդերձ իցէ,
եւ եթէ առէջ, եւ եթէ թեզան, եւ
եթէ ամենայն անօթ մաշկեղէն որ լուա-
նայցի եւ ելանիցէ ի նմանէ արածն,
59 կրկին լուասցի եւ սուրբ լիցի։ Այս օ-
րէնք իցէ արածի բորոտութեան ասուեայ
հանդերձի կամ կտաւոյ կամ առիջոյ
կամ թեզանոյ կամ ամենայն մաշկեղէն
անօթոյ, ի սրբել կամ ի պղծել զնա։

## ԳԼ. ԺԴ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ,
2 Այս օրէնք եղիցի բորոտի յաւուր յորում
3 սրբեսցի. Ածցի առ քահանայն. Եւ ել-
ցէ քահանայն արտաքոյ բանակին, եւ
տեսանիցէ քահանայն. եւ ահա բժշկ-
եալ իցէ արած բորոտութեանն ի բորո-
4 տէ անտի, Հրաման տացէ քահանայն,
եւ առցեն սրբելոյն երկուս հաւս կեն-
դանիս սուրբս, եւ փայտ եղեւնեայ եւ
5 [5]կարմիր մանեալ՝ եւ զոպա։ Եւ հրաման
տացէ քահանայն, եւ սպանցեն զմի
հաւն յանօթ խեցեղէն ի վերայ ջրոյ կեն-
6 դանւոյ։ Եւ զհաւն կենդանի առցէ, եւ

[1] Եբր. գոչեսցէ՝ Պիղծ, պիղծ [2] Յեբր. պակասէ
[3] Եբր. գայրացեալ

[4] Եբր. փտութիւն է ի ներքոյ նորա, կամ արտա-
քոյ նորա [5] Եբր. որդան կարմիր

զփայտն եղեւնեայ եւ [1]զկարմիրն մանւ-
եալ" եւ զզոպայն, եւ թացցէ զնոսա եւ
զհաւն կենդանի յարեան հաւուն սպանե-
7 լոյ ի վերայ ջրոյն կենդանւոյ: Եւ ցա-
նեսցէ ի վերայ սրբելոյն ի բորոտութենէ
եւթն անգամ, եւ սրբեսցէ զնա․ եւ ար-
8 ձակեսցէ զհաւն կենդանի ի դաշտ: Եւ
լուասցէ [2]սրբեալն զձորձս իւր, եւ գերծցէ
զամենայն զմազ իւր, եւ լուասցի ջրով
եւ սուրբ լիցի․ եւ ապա մտցէ ի բանակն,
եւ լիցի արտաքոյ տան իւրոյ զեւթն օր:
9 Եւ յաւուրն եւթներորդի գերծցէ զամե-
նայն զմազ իւր եւ զգլուխ եւ զմօրուս
եւ զյօնս, եւ զամենայն զմազ իւր գերծ-
ցէ․ եւ ողողեսցէ զհանդերձս իւր, եւ
լուասցէ զմարմին իւր ջրով, եւ սուրբ
լիցի:
10 Եւ յաւուրն ութերորդի առցէ երկուս
գառինս անարատս [3]տարեւորս, եւ որոջ
մի անարատ տարեւոր, եւ երիս տասա-
նորդս նաշհոյ ի զոհ իւղով զանգեալ, եւ
11 ճաշակ մի իւղոյ: Եւ կացուսցէ քահա-
նայն որ սրբիցէ՝ զայրն որ սրբիցի, եւ
[4]զայն՝ առաջի" խորանին վկայութեան:
12 Եւ առցէ քահանայն զմի գառնն, եւ մա-
տուսցէ զնա վասն յանցանաց, եւ զճա-
շակն իւղոյ, եւ [5]նուիրեսցէ զայն նուէր"
13 առաջի Տեառն: Եւ սպանցէ զգառնն
[3]զմեւս ի տեղւոջն ուր սպանանիցեն զող-
ջակէզն եւ զվասն մեղացն ի սուրբ տեղ-
ւոջ․ զի որպէս որ վասն մեղացն իցէ,
նոյնպէս եւ որ վասն յանցանացն իցէ,
եւ եղիցի քահանային․ զի սրբութիւն
14 սրբութեանց է: Եւ առցէ քահանայն յա-
րենէ այնր որ վասն յանցանացն իցէ, եւ
դիցէ քահանայն յարենէ անտի ի վերայ
բլթակի աջոյ ունկան այնորիկ որ սրբի-
ցին, եւ ի վերայ [6]ծայրի աջոյ ձեռին նորա
15 եւ ի վերայ [6]ծայրի ոտին նորա աջոյ: Եւ
առեալ քահանային ի ճաշակէ անտի իւ-
ղոյ՝ արկցէ ի ձախոյ ձեռն քահանային:
16 Եւ թացցէ քահանայն զմատն իւր աջոյ
յիւղոյ անտի որ իցէ ի ձեռին իւրում ձա-
խոյ, եւ ցանեսցէ մատամբ իւրով եւթն
17 անգամ առաջի Տեառն: Եւ զմնացեալ
եւղն ի ձեռին իւրում՝ դիցէ քահանայն
ի վերայ բլթակի աջոյ ունկան այնորիկ
որ սրբելոցն իցէ, եւ [7]ի ծայրի աջոյ ձե-
ռին նորա, եւ [7]ի ծայրի աջոյ ոտին նո-
18 րա, ի տեղւոջ արեանն յանցանաց: Եւ
զմնացեալ եւղն ի ձեռին քահանային՝
դիցէ քահանայն ի վերայ գլխոյ սրբեցե-
լոյն, եւ քաւեսցէ վասն նորա քահանայն
19 առաջի Տեառն: Եւ արասցէ քահանայն
զվասն մեղացն, եւ քաւեսցէ քահանայն
վասն այնորիկ որ սրբելոցն իցէ ի մեղաց
իւրոց, եւ ապա սպանցէ քահանայն զող-
20 ջակէզն: Եւ հանցէ քահանայն զողջա-
կէզն եւ զզոհն [3]առաջի Տեառն" ի սե-
ղանն, եւ քաւեսցէ վասն նորա քահա-
նայն, եւ սրբեսցի:
21 Եւ եթէ աղքատ իցէ եւ չպատահիցէ ձեռն
իւր, առցէ գառն մի վասն յանցանաց [8]զոր
յանցեաւ ի նուէր" ի քաւելոյ վասն նորա,
եւ զտասանորդ նաշհոյ իւղով զանգեալ
22 ի զոհ, եւ ճաշակ մի իւղոյ․ Եւ երկուս
տատրակս կամ երկուս ձագս աղաւնեաց,
որչափ ինչ եգիտ ձեռն նորա, եւ եղիցի
23 մին վասն մեղաց, եւ մին յողջակէզ: Եւ
տարցի զայն յաւուրն ութերորդի առ քա-
հանայն, առ ի սրբելոյ զնա առ դրան խո-
24 րանին վկայութեան առաջի Տեառն: Եւ
առեալ քահանային զգառնն զվասն յան-
ցանաց, եւ զճաշակն իւղոյ, եւ [9]դի-
25 ցէ նուէր" առաջի Տեառն: Եւ սպանցէ
զգառնն զվասն յանցանաց, եւ առցէ քա-
հանայն յարենէ անտի՝ որ վասն յանցա-
նացն իցէ, եւ դիցէ ի վերայ բլթակի ա-
ջոյ ունկան սրբեցելոյն, եւ [7]ի ծայրի ա-
ջոյ ձեռին նորա, եւ [7]ի ծայրի աջոյ ոտին
26 նորա: Եւ յիւղոյ անտի արկցէ քահա-
27 նայն ի ձախոյ ձեռն քահանային: Եւ ցա-
նեսցէ քահանայն մատամբն աջոյ յիւղոյ
անտի որ իցէ ի ձախոյ ձեռին իւրում՝
28 եւթն անգամ առաջի Տեառն: Եւ դիցէ
քահանայն յիւղոյ անտի որ իցէ ի ձեռին
իւրում ի վերայ բլթակի աջոյ ունկան
սրբեցելոյն, եւ ի վերայ [6]ծայրի աջոյ ձե-
ռին նորա, եւ ի վերայ [6]ծայրի աջոյ ո-
տին նորա, ի տեղւոջ արեանն որ վասն
29 յանցանացն իցէ: Եւ զմնացեալ եւղն որ
իցէ ի ձեռին քահանային՝ արկցէ ի գլուխ
սրբեցելոյն, եւ քաւեսցէ վասն նորա քա-
30 հանայն առաջի Տեառն: Եւ արասցէ զմի
ի տատրակաց անտի կամ ի ձագուցն ա-
ղաւնեաց՝ ըստ ընչին զոր եգիտ ձեռն
31 իւր, Զմին՝ վասն մեղաց, եւ զմին յող-
ջակէզ հանդերձ զոհիւն. եւ քաւեսցէ քա-

[1]Եբր․ զորդան կարմիրն [2]Եբր․ որ սրբին [3]Եբր․ [illegible] [4]Եբր․ զնոսա առաջի Տեառն ի դրան [5]Եբր․ երերեսցէ զնոսա երերումն [6]Եբր․ բութոյ [7]Եբր․ ի բութի

[8]Եբր․ յերերումն [9]Եբր․ երերեսցէ զնոսա քահանայն յերերումն

համայն վասն սրբեցելոյն առաջի Տեառն ։
32 Այս օրէն իցէ յորում իցէ արած բորո-
տութեան, եւ որ ոչ գտանիցի ի ձեռին
բաւական լինելոյ ի սրբութիւն իւր ։
33 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ
34 Ահարոնի եւ ասէ, Յորժամ մտանիցէք
յերկիրն Քանանացւոց զոր ես տաց ձեզ
ի ստացուած, եւ տացեմ արած բորո-
տութեան ի տունս երկրին ստացուածոյ
35 ձերոյ, Եւ գայցէ որոյ տունն իցէ, եւ
պատմիցէ քահանային եւ ասիցէ, Եթէ
36 Արած իմն երեւեցաւ ի տան իմում։ Հրա-
ման տացէ քահանայն թափել զտունն,
մինչչեւ մտեալ իցէ քահանային տեսա-
նել զտունն, եւ մի պղծեսցէ զամենայն
ինչ որ ի տանն կայցէ. եւ ապա մտցէ
37 քահանայն սրբել զտունն. Եւ տեսա-
նիցէ քահանայն զարածն յորմս տանն,
դնաստպոյնս, կանաչս կամ կարմրագ-
նեալս, եւ տեսիլ նորա դնաստագոյն իցէ
38 քան զորմոյն, Եւ ելեալ քահանայն ի
տանէ անտի ի դուռն տանն, զատուսցէ
39 քահանայն զտունն զեւթն օր։ Եւ եկեսցէ
դարձեալ քահանայն յաւուրն եւթներոր-
դի, եւ տեսանիցէ զտունն. եթէ սփռեալ
40 իցէ արածն ընդ որմս տանն, Հրաման
տացէ քահանայն, եւ քակեսցեն զքա-
րինսն յորս արածն իցէ, եւ հանցեն զնոսա
արտաքոյ քաղաքին ի տեղի անսուրբ ։
41 Եւ քերեսցեն զտունն ի ներքոյ շուրջա-
նակի, եւ հեղցեն զքերուածն արտաքոյ
42 քաղաքին ի տեղի անսուրբ ։ Եւ առցեն
այլ քարինս [1]քերածոյս, եւ դիցեն փո-
խանակ այնց քարանց, եւ այլ հող առ-
43 ցեն եւ ծեփեսցեն զտունն ։ Եւ եթէ անդ-
րէն կրկնեսցի արածն, եւ երեւեսցի ի
տանն՝ յետ զքարինսն քակելոյ եւ զտունն
44 քերելոյ եւ [1]միւսանգամ ծեփելոյ, Մտցէ
քահանայն եւ տեսցէ, եթէ սփռեալ իցէ
արածն ընդ տունն, [2]բնակ բորոտութիւն
45 է ի տանն, պիղծ է ։ Քակեսցեն զտունն
եւ զփայտ նորա եւ զքարինս նորա եւ
զամենայն հող տանն, եւ հանցեն ար-
46 տաքոյ քաղաքին ի տեղի անսուրբ ։ Եւ
որ մտանիցէ ի տունն զամենայն աւուրս
զատանելոյ նորա, պիղծ լիցի մինչեւ ցե-
47 րեկոյ։ Եւ որ ննջիցէ ի տան անդ՝ լուասցէ
զձորձս իւր, [1]եւ պիղծ լիցի մինչեւ ցե-
րեկոյ." եւ որ կերիցէ ի տանն՝ լուասցէ
զձորձս իւր, [1]եւ պիղծ լիցի մինչեւ ցե-
48 րեկոյ։" Եւ եթէ եկեալ մտանիցէ քա-
հանայն եւ տեսանիցէ, եւ ահա չիցէ
սփռեալ արածն ընդ տունն յետ ծեփե-
լոյ զտունն, սրբեսցէ քահանայն զտունն,
49 զի բժշկեցաւ արածն ։ Եւ առցէ առ ի
սրբելոյ զտունն երկուս հաւս [1]կենդանիս
սուրբս", եւ փայտ եղեւնեայ եւ [3]կար-
50 միր մանեալ" եւ զոպայ ։ Եւ սպանցէ զմի
հաւն յաման խեցեղէն ի վերայ ջրոյ կեն-
51 դանւոյ ։ Եւ առցէ զփայտն եղեւնեայ
եւ [4]զկարմիրն մանեալ" եւ զզոպայն եւ
զհաւն կենդանի, եւ թացցէ զնոսա յար-
եան հաւուն սպանելոյ եւ ի վերայ ջրոյ
կենդանւոյ, եւ ցանեսցէ նոքօք զտամբն
52 եւթն անգամ. Եւ սրբեսցէ զտունն ար-
եամբ հաւուն եւ ջրովն կենդանեաւ եւ
հաւուն կենդանեաւ եւ փայտիւն եղեւ-
նեաւ եւ զոպայիւն եւ [5]կարմրովն մա-
53 նելով". Եւ արձակեսցէ զհաւն կենդանի
արտաքոյ քաղաքին ի դաշտ, եւ քա-
ւեսցէ վասն տանն, եւ մաքրեսցի [1]եւ
54 սուրբ եղիցի": Այս օրէն լիցի ըստ ամե-
նայն արածոյ բորոտութեան եւ հա-
55 րածի, Եւ բորոտութեան հանդերձի եւ
56 տան, Եւ սպւոյ եւ պալարի եւ պաղ-
57 պաջոյ ։ Նշանակելոյ թէ յորում աւուր
պղծիցի եւ յորում աւուր սրբիցի, այս
օրէն լիցի բորոտութեան ։

## Գլ. ԺԵ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ Ա-
2 հարոնի եւ ասէ, Խօսեաց ընդ որդիսդ
Իսրայէլի եւ ասասցես ցդոսա, Այր ու-
րուք առն որոյ լինիցի ծորումն ի մարմ-
3 նոյ իւրոյ, ծորումն իւր պիղծ է ։ Եւ այս
[6]օրէն լիցի պղծութեան նորա, որոյ ծո-
րիցէ սերմն ի մարմնոյ իւրմէ, կամ թէ
հալիցի մարմին նորա ի ծորելոյն. պղծու-
թիւն իւր ի նմա է զամենայն աւուրս
ծորելոյ մարմնոյ իւրոյ, կամ թէ հալիցի
մարմին նորա ի ծորելոյ անտի", պղծու-
4 թիւն մարմնոյ է այն ։ Ամենայն անկո-
ղին յորում ննջիցէ սերմնականն՝ պիղծ
եղիցի. եւ ամենայն յորոյ վերայ նստիցի՝
5 պիղծ լիցի ։ Եւ մարդ որ մերձեսցի յան-
կողին նորա՝ ողողեսցէ զձորձս իւր, եւ
լուասցի ջրով, եւ պիղծ լիցի մինչեւ ցե-

[1] Յեբր. գ–խ––ե [2] Եբր. զայրացեալ

[3] Եբր. որդան կարմիր [4] Եբր. զորդան կարմիրն
[5] Եբր. որդան կարմրոյն [6] Եբր. լինիցի պղծու-
թիւն նորա ի ծորմանն իւրում. եթէ հոսեսցէ
մարմին նորա զծորումն իւր, կամ թէ կացցէ
մարմին նորա ի ծորելոյն

6 ընկոյ ։ Եւ որ նստիցի ի վերայ անօթոյ
յորում նստեալ իցէ սերմնակաթին, ողո-
ղեսցէ զհանդերձս իւր եւ լուասցի ջրով,
7 եւ պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ ։ Եւ որ
մերձեսցի ի մարմին սերմնակաթին, ողո-
ղեսցէ զձորձս իւր, եւ լուասցի ջրով,
8 եւ պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ ։ Եւ եթէ
թուք սերմնակաթին հասանիցէ ի սուրբն,
ողողեսցէ զձորձս իւր, եւ լուասցի ջրով,
9 եւ պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ ։ Եւ ամե-
նայն համետ [1]իշոյ յորոյ վերայ նստիցի
սերմնակաթն՝ պիղծ լիցի [1]մինչեւ ցերե-
10 կոյ"։ Եւ ամենայն որ մերձեսցի յամե-
նայն որ ինչ ի ներքոյ նորա իցէ, պիղծ
11 լիցի մինչեւ [2]ցերեկոյ ։ Եւ յոր ինչ մեր-
ձեսցի սերմնակաթն եւ զձեռս իւր ոչ
լուանայցէ ջրով, ողողեսցէ զհանդերձս
իւր, եւ լուասցէ զմարմին իւր ջրով, եւ
12 պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ ։ Եւ անօթ
խեցեղէն յոր մերձեսցի սերմնակաթն,
փշրեսցի, եւ ամենայն անօթ փայտեղէն
լուասցի ջրով, [1]եւ եղիցի սուրբ։"
13 Եւ եթէ սրբեսցի սերմնակաթն ի բղխ-
մանէ իւրմէ, համարեսցի իւր եւթն օր
ի սրբութիւն իւր, եւ ողողեսցէ զհան-
դերձս իւր, եւ լուասցէ զմարմին իւր
14 ջրով կենդանեաւ, եւ եղիցի սուրբ ։ Եւ
յաւուրն ութերորդի առցէ երկուս տատ-
րակս կամ երկուս ձագս աղաւնեաց, եւ
տարցի զայն առաջի Տեառն ի դուռն խո-
րանին վկայութեան, եւ տացէ ցքահա-
15 նայն ։ Եւ արասցէ քահանայն զմին վասն
մեղաց, եւ զմին՝ յողջակէզ, եւ քաւեսցէ
վասն նորա քահանայն առաջի Տեառն ի
բղխմանէ անտի նորա ։
16 Եւ այր ոք յորմէ ելանիցէ արութիւն
սերման, լուասցէ զամենայն մարմին իւր
17 ջրով, եւ պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ ։ Եւ
ամենայն հանդերձ եւ մաշկ յորոյ վերայ
հասանիցէ արութիւն սերման, լուասցին
ջրով, եւ պիղծ լիցին մինչեւ ցերեկոյ ։
18 Եւ կին ընդ որում հարկանիցի այր արու-
թեամբ սերման, լուասցին ջրով, եւ
պիղծ լիցին մինչեւ ցերեկոյ ։
19 Եւ կին որոյ [3]բղխիցէ արիւն, եւ լի-
նիցի բղխումն արեան" նորա ի մարմնի
իւրում, զեւթն օր եղիցի ի դաշտանի իւ-
րում. ամենայն որ հարկանիցի ընդ նա,
20 պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ ։ Եւ ամենայն
յորոյ վերայ ննջիցէ ի դաշտանին իւրում,
եւ ամենայն յորոյ վերայ նստիցի՝ պիղծ
21 լիցի ։ Եւ ամենայն որ մերձենայցէ յան-
կողնին նորա, ողողեսցէ զհանդերձս իւր,
եւ լուասցէ զմարմին իւր ջրով, եւ պիղծ
22 լիցի մինչեւ ցերեկոյ ։ Եւ ամենայն որ
մերձենայցէ յամենայն անօթ յորոյ վե-
րայ նստիցի նա, ողողեսցէ զհանդերձս
իւր, եւ լուասցի ջրով, եւ պիղծ լիցի
23 մինչեւ ցերեկոյ ։ Եւ եթէ առկաւքն յան-
կողնին իւրում իցէ, եւ կամ թէ ի վե-
րայ անօթոյ իրիք յորոյ վերայ նստեալ
իցէ, ի մերձենալ ուրուք ի նա՝ պիղծ
24 լիցի մինչեւ ցերեկոյ ։ Եւ եթէ ննջելով
ոք ննջեսցէ ընդ նմա, եւ պղծութիւն
նորա ի նմա իցէ, պիղծ լիցի զեւթն օր,
եւ ամենայն անկողին յորոյ վերայ եւ
ննջիցէ՝ պիղծ լիցի [1]մինչեւ ցերեկոյ"։
25 Եւ կին որ բղխիցէ զբղխումն արեան
զաւուրս բազումս, ոչ ի ժամանակի դաշ-
տանի իւրոյ, եւ եթէ բղխիցէ յետ դաշ-
տանին իւրոյ, ամենայն աւուրք բղխ-
ման պղծութեան իւրոյ, այնպէս իցեն
իբրեւ զաւուրս դաշտանին իւրոյ. եւ
26 եղիցի պիղծ ։ Եւ ամենայն անկողին յո-
րոյ :վերայ ննջիցէ զամենայն աւուրս
բղխման իւրոյ, ըստ անկողնի դաշտա-
նին իւրոյ լիցի անսուրբ, եւ ամենայն
անօթ յորոյ վերայ նստիցի՝ պիղծ լիցի
ըստ պղծութեան աւուրց դաշտանին իւ-
27 րոյ ։ Ամենայն որ մերձեսցի ի նա՝ պիղծ
լիցի, եւ ողողեսցէ զձորձս իւր, եւ
լուասցէ զմարմին իւր ջրով, եւ պիղծ
28 լիցի մինչեւ ցերեկոյ ։ Ապա թէ սրբեսցի
ի բղխմանէ անտի, համարեսցի իւր ա-
29 ւուրս եւթն, եւ ապա սրբեսցի ։ Եւ
յաւուրն ութերորդի առցէ իւր երկուս
տատրակս կամ երկուս ձագս աղաւնեաց,
եւ տարցի զայն առ քահանայն ի դուռն
30 խորանին վկայութեան ։ Եւ արասցէ քա-
հանայն զմին վասն մեղաց, եւ զմին յող-
ջակէզ. եւ քաւեսցէ վասն նորա քահա-
նայն առաջի Տեառն ի բղխմանէ պղծու-
թեան նորա ։
31 Եւ զգուշաւորս առնիցէք զորդիսն Իս-
րայէլի ի պղծութեանց իւրեանց. եւ ոչ
մեռանիցին վասն անսրբութեան իւ-
րեանց, առ ի պղծելոյ նոցա զխորանն իմ
32 որ է ի նոսա ։ Այս օրէն իցէ սերմնակա-
թին, եւ եթէ ելանիցէ յումեքէ արու-
33 թիւն սերման՝ առ ի պղծելոյ նովաւ, Եւ

[1] Յեբր· պակաս [2] Եբր· ցերեկոյ · և որ բառնայցէ զնոսա՝ լուասցէ զձորձս իւր · և լուասցի ջրով, և պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ [3] Եբր· իցէ բղխումն, արիւն իցէ բղխումն

տեառատեսի ի զաչտանի իւրում, եւ սերմ-
նակաթին ի բղխման իւրում, արուին եւ
իգի, եւ առն որ ննջիցէ ընդ զաչտանի ։

## ԳԼ. ԺԶ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի [1] եւ ասէ՚՚,
յետ վախճանելոյ [2] որդւոցն Ահարոնի, [3] ի
մատուցանել նոցա զհուրն օտար՚՚ առաջի
2 Տեառն եւ սատակել. Եւ ասէ Տէր ցՄով-
սէս, Խօսեաց ընդ Ահարոնի ընդ եղբօր
քում, եւ մի [4] մտցէ յամենայն ժամ ի
սրբութիւնն ի ներքս քան զվարագոյրն
յանդիման քաւութեանն, որ է ի վերայ
տապանակի վկայութեանն, եւ ոչ մե-
ռանիցի. զի ամպով երեւեցայց ի վերայ
3 քաւութեանն ։ [5] Եւ այսպէս՚՚ մտանիցէ Ա-
հարոն ի սրբութիւնն. զուարակաւ յանդ-
ւոյ վասն մեղաց, եւ խոյիւ յողջակէզ ։
4 Եւ [6] պատմուճան կտաւի սրբեալ զգեց-
ցի, եւ անդրավարտիս կտաւիս ունիցի
յանդամս իւր, եւ գօտի կտաւի ածեալ
ընդ մէջ իւր, եւ խոյր կտաւի եդեալ ի
գլուխ, զի հանդերձ սրբութեան են. եւ
լուասցէ ջրով զամենայն մարմին իւր,
5 եւ զգեցցի զնոսա ։ Եւ ի ժողովրդենէ
որդւոցն Իսրայէլի առցէ երկուս նոխազս
յայծեաց վասն մեղաց, եւ խոյ մի յող-
6 ջակէզ ։ Եւ մատուսցէ Ահարոն զզուա-
րակն վասն մեղաց իւրոց, եւ քաւեսցէ
7 վասն իւր եւ վասն տան իւրոյ ։ Եւ առցէ
երկուս նոխազս եւ կացուսցէ զնոսա ա-
ռաջի Տեառն առ դրան խորանին վկա-
8 յութեան ։ Եւ արկցէ Ահարոն ի վերայ
երկուց նոխազացն վիճակս, վիճակ մի
9 Տեառն եւ վիճակ մի արձակելոյ ։ Եւ մա-
տուսցէ Ահարոն զնոխազն յորոյ վերայ
[7] ելցէ վիճակն արձակելոյ, եւ կացուսցէ
10 զնա առաջի Տեառն կենդանի, Քաւել՚՚
նովաւ՝ առ արձակելոյ զնա յարձակումն,
եւ թողլոյ զնա յանապատ. [1] եւ առցէ նո-
խազն յինքն զանօրէնութիւնս նոցա յան-
կոխն՚՚ ։
11 Եւ մատուսցէ Ահարոն զզուարակն
զվասն մեղաց զիւր, եւ քաւեսցէ վասն
իւր եւ վասն տան իւրոյ, եւ սպանցէ
12 զզուարակն զվասն մեղացն զիւր ։ Եւ առցէ
լի բուրվառ կայծակունս հրոյ ի սե-
ղանոյ անտի որ է առաջի Տեառն, եւ
լցցէ զձեռս իւր խնկով հանդերձանացն
մանր աղացելով, եւ տարցի ի ներքս
13 քան զվարագոյրն ։ Եւ դիցէ զխունկն ի
վերայ հրոյն առաջի Տեառն, եւ ծած-
կեսցէ ծուխ խնկոյն զքաւութիւնն որ
իցէ ի վերայ վկայութեանցն, եւ ոչ մե-
14 ռանիցի ։ Եւ առցէ յարենէ զուարակին,
եւ ցանեսցէ մատամբ իւրով ի վերայ քա-
ւութեանն ընդ կողմն արեւելից ընդդէմ
քաւութեանն, եւ ցանեսցէ եւթն ան-
գամ յարենէ անտի մատամբ իւրով ։
15 Եւ սպանցէ զնոխազն զվասն մեղաց,
որ վասն ժողովրդեանն իցէ [1] առաջի
Տեառն՚՚. եւ տարցի յարենէ անտի ի ներքս
քան զվարագոյրն, եւ արասցէ զարիւն
նորա զոր օրինակ արար զարիւն զուա-
րակին. եւ ցանեսցէ զարիւն նորա ի վե-
րայ [8] սեղանոյն յանդիման քաւութեանն ։
16 Եւ քաւեսցէ զսրբութիւնն ի պղծու-
թեանց որդւոցն Իսրայէլի եւ յանիրա-
ւութեանց նոցա, վասն ամենայն մեղաց
նոցա. եւ այսպէս արասցէ ի խորանին
վկայութեան, [9] ստացելոյ ի նոսա ի մէջ
17 պղծութեան նոցա ։ Եւ ամենեւին մարդ
ոչ լինիցի ի խորանին վկայութեան ի մը-
տանել նորա քաւել ի սրբութեանն, մին-
չեւ ելանիցէ եւ քաւեսցէ վասն իւր եւ
վասն տան իւրոյ, եւ վասն ամենայն ժո-
18 ղովրդեան որդւոցն Իսրայէլի ։ Եւ ելցէ
ի սեղանն որ առաջի Տեառն, եւ քա-
ւեսցէ ի վերայ նորա, եւ առցէ յարենէ
զուարակին եւ յարենէ նոխազին, եւ
դիցէ ի վերայ եղջերաց սեղանոյն չուր-
19 ջանակի ։ Եւ ցանեսցէ յարենէ անտի մա-
տամբ իւրով ի վերայ նորա եւթն ան-
գամ, եւ մաքրեսցէ զնա, եւ սրբեսցէ
զնա ի պղծութեանց որդւոցն Իսրայէլի ։
20 Եւ վախճանեսցէ առ ի քաւելոյ զսըր-
բութիւնն, եւ զխորանն վկայութեան
եւ զսեղանն, [1] եւ վասն քահանայիցն սըր-
բեսցէ,՚՚ եւ մատուսցէ զնոխազն կեն-
21 դանի. Եւ դիցէ Ահարոն զձեռս իւր ի
վերայ գլխոյ նոխազին կենդանւոյ, եւ
խոստովան լիցի ի վերայ նորա զամենայն
անօրէնութիւնս որդւոցն Իսրայէլի, եւ
զամենայն անիրաւութիւնս նոցա եւ զա-
մենայն զմեղս նոցա. եւ դիցէ զնոսա ի

---

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. երկուց որդւոցն [3] Եբր. ի մատչել նոցա [4] Եբր. մտցէ [5] Եբր. Այսու [6] Եբր. շապիկ [7] Եբր. ել վիճակն Տեառն, և արասցէ զնա վասն մեղաց. (10) Եւ զնոխազն յորոյ վերայ ել վիճակն արձակելոյ՝ կացուսցէ կենդանի առաջի Տեառն, քաւել

[8] Եբր. քաւութեանն և [9] Եբր. բնակելոյ

վերայ գլխոյ նոխազին կենդանւոյ․ եւ
արձակեսցէ ի ձեռն առն պատրաստելոյ՝
22 յանապատ։ Եւ տարցէ նոխազն յանձն իւր
զանօրէնութիւնս նոցա յերկիր անկոխ․
եւ արձակեսցէ զնոխազն յանապատ։
23 Եւ մտցէ Ահարոն ի խորանն վկայու-
թեան, եւ մերկասցի զպատմուճանն կը-
տաւի զոր զգենոյր ի մտանելն իւրում
24 ի սրբութիւնն, եւ դիցէ զայն անդ։ Եւ
լուասցէ զմարմին իւր ջրով ի տեղւոջն
սրբութեան, եւ զգեցցի զպատմուճանն
իւր․ եւ ելեալ արասցէ զողջակէզն իւր
եւ զողջակէզ ժողովրդեանն, եւ քաւեսցէ
վասն իւր եւ [1]վասն տան իւրոյ եւ՟ վասն
ժողովրդեանն [1]որպէս վասն քահանա-
25 յիցն՟։ Եւ զճարպն որ վասն մեղացն իցէ՝
[2]հանցեն ի սեղանն՟։
26 Եւ որ արձակիցէ զնոխազն [1]ուխտեալ
յարձակումն, ողողեսցէ զձորձս իւր, եւ
լուասցէ զմարմին իւր ջրով, եւ ապա
մտցէ ի բանակն։
27 Եւ զզուարակն որ վասն մեղաց, եւ
զնոխազն զվասն մեղաց, որոց արիւնն
մուծաւ քաւել ի սրբութեանն, հանցեն
արտաքոյ բանակին եւ այրեսցեն զնոսա
հրով, եւ զմորթս նոցա եւ զմիս նոցա
28 եւ զապուառ նոցա։ Եւ որ այրիցէ զնո-
սա՝ ողողեսցէ զհանդերձս իւր, եւ լուաս-
ցէ զմարմին իւր ջրով․ եւ ապա մտցէ
ի բանակն։
29 Եւ եղիցի ձեզ այն օրէն յաւիտենա-
կան, յամսեանն եւթներորդի ի տասն
ամսոյն, լլկեսջիք զանձինս ձեր, եւ զա-
մենայն գործ մի՛ գործիցէք, բնակն եւ
30 պանդուխտն որ յեցեալ իցէ ի ձեզ։ Զի
յաւուրն յայնմիկ լինիցի քաւութիւն վասն
ձեր՝ առ ի սրբելոյ զձեզ յամենայն մե-
ղաց ձերոց առաջի Տեառն․ եւ սրբես-
31 ջիք։ Զի շաբաթ շաբաթուց է, եւ ե-
ղիցի ձեզ այն ի հանգիստ․ եւ լլկեսջիք
զանձինս ձեր, զի օրէն յաւիտենական է։
32 Եւ քաւեսցէ քահանայն զոր օծանիցեն,
եւ զորոյ կատարիցեն զձեռս նորա քա-
հանայանալ յետ հօր իւրոյ, եւ զգես-
ցի զպատմուճանն կտաւի՝ պատմուճան
33 սուրբ․ Եւ քաւեսցէ զսրբութիւն սրբու-
թեանցն, եւ զխորանն վկայութեան եւ
զսեղանն․ եւ քաւեսցէ վասն քահանա-
յիցն, եւ վասն ամենայն ժողովրդեանն
34 քաւեսցէ։ Եւ եղիցի ձեզ այն օրէն յա-
ւիտենական՝ քաւել վասն որդւոցն Իս-
րայելի յամենայն մեղաց նոցա մի ան-
գամ [3]ի տարւոջ առնիցի․՟ որպէս հրա-
մայեաց Տէր Մովսիսի։

## ԳԼ․ ԺԷ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Խօսեաց դու ընդ Ահարոնի եւ ընդ որդիս
նորա եւ ընդ ամենայն որդիսն Իսրայե-
3 լի, եւ ասասցես զնոսա, Այս բան է զոր
պատուիրեաց Տէր եւ ասէ․ Այր ոք այր
յորդւոցն Իսրայելի որ սպանանիցէ ար-
ջառ կամ ոչխար կամ այծ ի բանակի,
եւ որ ոք սպանանիցէ արտաքոյ բանա-
կին, [1]եւ ի դուռն խորանին վկայութեան
ոչ ածիցէ զայն, առ առնելոյ զնա յող-
ջակէզ վասն փրկութեան՝ Տեառն ընդու-
նելի ի հոտ անուշից․ եւ որ սպանանիցէ
4 արտաքոյ,՟ Եւ ի դուռն խորանին վկա-
յութեան ոչ ածիցէ առ ի մատուցանելոյ
պատարագ Տեառն յանդիման խորանին
վկայութեան Տեառն, յարիւն համարեսցի
մարդոյն այնմիկ․ որպէս թէ արիւն ե-
հեղ․ սատակեսցի անձն այն ի ժողովըր-
5 դենէ իւրմէ․ Որպէս զի ածիցեն որդիքն
Իսրայելի զզոհս իւրեանց՝ զոր ինքեանք
սպանանիցեն ի դաշտս, եւ մատուսցեն
առաջի Տեառն ի դուռն խորանին վկա-
յութեան առ քահանայն, եւ զենուցուն
զնոսա զենումն փրկութեան՝ Տեառն։
6 Եւ [4]հեղցէ քահանայն զարիւնն առ սե-
ղանովն յանդիման Տեառն, առ դրան խո-
րանին վկայութեան, եւ [5]հանցեն զճարպն
7 ի հոտ անուշից Տեառն։ Եւ ոչ եւս զո-
հիցեն զզոհս իւրեանց սնոտեաց զորոց
զհետ ինքեանք պոռնկէին․ օրէն յաւի-
8 տենական եղիցի ձեզ յազգս ձեր։ Եւ
առասցես զնոսա, Մարդ ոք մարդ յորդ-
ւոցն Իսրայելի, եւ յորդւոց եկաց յեցե-
լոց ի ձեզ, որ առնիցէ ողջակէզ կամ
9 զոհ, Եւ ի դուռն խորանին վկայութեան
ոչ ածիցէ առնել զնա Տեառն, սատա-
կեսցի մարդն այն ի ժողովրդենէ իւրմէ։
10 Եւ մարդ ոք մարդ յորդւոցդ Իսրայելի
կամ յեկաց յեցելոց ի ձեզ, որ ուտիցէ
զամենայն արիւն, հաստատեցից զերեսս
իմ ի վերայ անձինն որ ուտիցէ զարիւնն,
եւ կորուսից զնա ի ժողովրդենէ իւրմէ․
11 Զի շունչ ամենայն մարմնոյ արիւն իւր

[1] Յեբր․ պակասէ  [2] Եբր․ այրեսցէ ի վերայ սեղանոյն

[3] Եբր․ ի տարւոջ․ Եւ արար  [4] Եբր․ սրսկեսցէ
[5] Եբր․ այրեսցէ

է. եւ եսետու զայն ձեզ ի սեղանն՝ քա-
ւել վասն անձանց ձերոց. զի արիւն
¹նորա փոխանակ անձին ¹նորա քաւես-
12 ցէ ։ Վասն այնորիկ ասացի ցորդիսն Իս-
րայէլի, Ամենայն անձն ի ձէնջ արիւն մի՛
կերիցէ. եւ եկն որ եկեալ յեցեալ իցէ
13 ի ձեզ՝ արիւն մի՛ կերիցէ ։ Եւ մարդ ոք
մարդ յորդւոցն Իսրայէլի կամ յեկաց յե-
ցելոց ի ձեզ, որ որսայցէ որս երէ ինչ
կամ թռչուն որ ուտիցի, հեղցէ զարիւն
14 նորա եւ ծածկեսցէ հողով ։ Զի շունչ ա-
մենայն մարմնոյ արիւն իւր է. եւ ասացի
ցորդիսն Իսրայէլի, Զարիւն ամենայն
մարմնոյ մի՛ ուտիցէք, զի շունչ ամե-
նայն մարմնոյ արիւն իւր է. ամենայն
որ ուտիցէ զայն՝ սատակեսցի ։
15 Եւ ամենայն անձն որ ուտիցէ զմեռե-
լոտի կամ զգազանաբեկ, ի բնակաց կամ
ի պանդխտաց, ողողեսցէ զհանդերձս իւր,
եւ լուասցէ զմարմին իւր, եւ պիղծ լիցի
մինչեւ ցերեկոյ, եւ ապա սուրբ լիցի.
16 Եւ եթէ ոչ ողողեսցէ զհանդերձս իւր,
եւ ոչ լուասցէ զմարմին իւր ջրով, ըն-
կալցի զանօրէնութիւնս յանձն իւր ։

## ԳԼ. ԺԸ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ,
2 Խօսեաց ընդ որդիսն Իսրայէլի եւ ասաս-
ցես ցնոսա, Ես եմ Տէր Աստուած ձեր ։
3 Ըստ ամենայն գնացից երկրին Եգիպ-
տացւոց յորում պանդխտեցարուք՝ մի՛
առնիցէք, եւ ըստ գնացից երկրին Քա-
նանացւոց յոր ես տարայց զձեզ՝ մի՛ առ-
նիցէք, եւ ըստ օրինաց նոցա մի՛ գնայ-
4 ցէք ։ Զիրաւունս իմ արասջիք, եւ
զհրամանս իմ պահեսջիք, գնալ ի նոսա.
5 ես եմ Տէր Աստուած ձեր ։ Եւ պահես-
ջիք զամենայն հրամանս իմ եւ զամե-
նայն զիրաւունս իմ, եւ արասջիք զնո-
սա, զոր արարեալ մարդոյ՝ կեցցէ նո-
քօք. ես եմ Տէր ¹Աստուած ձեր"։
6 Մարդ ոք մարդ առ ամենայն ընտա-
նութիւն մարմնոյ իւրոյ մի՛ մերձեսցի՝
յայտնել զառաւկանս նորա. ¹զի ես եմ
7 Տէր ։ Զառաւկանս հօր քո եւ զառաւկանս
մօր քո մի՛ յայտնեսցես. զի մայր քո է,
եւ մի՛ յայտնեսցես զառաւկանս նորա ։
8 Զառաւկանս կնոջ հօր քո մի՛ յայտնես-
9 ցես. զի առաւկանք հօր քում են ։ Զա-
ռաւկանս քեռ քո, թէ՛ առ ի հօրէ իցէ
կամ առ ի մօրէ, ի տան ծնեալ կամ ար-
տաքոյ, մի՛ յայտնեսցես զառաւկանս նո-
10 րա ։ Զառաւկանս դստեր ուստեր քո կամ
զդստեր դստեր քո, մի՛ յայտնեսցես զա-
ռաւկանս նոցա. զի առաւկանք քո են ։
11 Զառաւկանս դստեր կնոջ հօր քո մի՛ յայտ-
նեսցես, զի համհօրեայ քոյր քո է. մի՛
12 յայտնեսցես զառաւկանս նորա ։ Զառա-
կանս հօրաքեռ քո մի՛ յայտնեսցես. զի
13 ընտանի հօր քո է ։ Զառաւկանս մօրաքեռ
քո մի՛ յայտնեսցես, զի ընտանի մօր քո
14 է ։ Զառաւկանս հօրեղբօր քո մի՛ յայտնես-
ցես, եւ առ կին նորա մի՛ մտանիցես, զի
15 ²ազգական քո է ։ Զառաւկանս նուոյ քո
մի՛ յայտնեսցես, զի կին որդւոյ քո է.
մի՛ յայտնեսցես զառաւկանս նորա ։ ¹Եւ
զդուստր ուստեր նորա, կամ զդուստր
դստեր նորա մի՛ առնուցուս՝ յայտնել զա-
ռաւկանս նոցա, զի ընտանի են քո. ամ-
16 պարշտութիւն է"։ Զառաւկանս կնոջ եղ-
բօր քո մի՛ յայտնեսցես, զի առաւկանք
17 եղբօր քում են ։ Զառաւկանս կնոջ եւ
զդստեր իւրոյ մի՛ յայտնեսցես. զդուստր
ուստեր նորա եւ զդուստր դստեր նորա
մի՛ առնուցուս՝ յայտնել զառաւկանս նո-
ցա, զի ընտանի քո են. ամպարշտու-
18 թիւն է ։ Կին առ քեռ իւրով մի՛ առնու-
ցուս նախանձընդդէմ՝ յայտնել զառա-
կանս նորա առ նովաւ կենդանւոյն ։
19 Եւ առ կին ի դաշտանի պղծութեան
իւրոյ մի՛ մտանիցես՝ յայտնել զառաւկանս
նորա ։
20 Եւ ի կին ընկերի քո մի՛ տայցես զա-
րութիւն սերման քո, առ ի պղծելոյ ընդ
21 նմա ։ Եւ ի սերմանէ քումմէ մի՛ տացես
³ծառայել իշխանի", եւ մի՛ պղծեսցես զա-
22 նուն ⁴իմ սուրբ. զի" ես եմ Տէր ։ Եւ
ընդ արուի մի՛ մտանիցես զմուտ կանա-
23 նց. զի պղծութիւն է այն ։ Եւ յամենայն
անասուն ոչ տայցես զարութիւն սերման
քո առ ի պղծելոյ ընդ նմա. եւ կին մի՛
կացցէ առաջի ամենայն անասնոյ մառա-
բերել ի նմա. զի զարշելի է այն ։
24 Եւ մի՛ պղծիցիք այնու ամենայնիւ, զի
այնու ամենայնիւ պղծեցան ազգքն, զոր
25 ես մերժեցից յերեսաց ձերոց ։ Եւ ե-
ղեւ զարշելի երկիրն, եւ հանդէս արարի
անիրաւութեանց նորա ի նմանէ. եւ
տաղտկացաւ երկիրն ի բնակչաց իւրոց ։
26 Եւ պահեսջիք զօրէնս իմ եւ զամենայն

¹Յեբր. դոխանակ

²Եբր. կին հօրեղբօր ³Եբր. անցուցանել ընդ հուր վասն Մողոքայ ⁴Եբր. Աստուծոյ քո.

հրամանս իմ, եւ մի՛ առնիցէք յամենայն
պղծութեանցն այնոցիկ, բնակն եւ եկն
27 եւ պանդուխտն որ ի ձեզ իցէ. Զի զայն
ամենայն պղծութիւնս արարին մարդիկ
երկրին որ էին անդ յառաջ քան զձեզ,
28 եւ պղծեցաւ երկիրն։ Զի մի՛ տաղտկա-
նայցէ եւ ձեզ երկիրն ի պղծել ձեր զնա,
որպէս տաղտկացաւ ազգօքն որ էին յա-
29 ռաջ քան զձեզ։ Զի ամենայն մարդ որ
արասցէ յամենայն պղծութեանցն այ-
նոցիկ, սատակեսցին անձինքն որ ա-
նիցեն զայն ի միջոյ ժողովրդեան իւ-
30 րեանց։ Եւ պահեսջիք զպահպանութիւնս
իմ, զի մի՛ առնիցէք յամենայն պղծու-
թեան օրինացն որ գործեցան յառաջ քան
զձեզ. եւ մի՛ պղծիցիք նոքօք, զի ես
եմ Տէր Աստուած ձեր։

## ԳԼ. ԺԹ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Խօսեաց ընդ ժողովրդեան որդւոցն Իս-
րայէլի եւ ասասցես ցնոսա, Սուրբ եղի-
րուք, զի ես սուրբ եմ Տէր Աստուած
ձեր։
3 Իւրաքանչիւր [1]ի հօրէ եւ ի մօրէ" իւր-
մէ երկնչիջիք. եւ զշաբաթս իմ պահես-
ջիք. զի ես եմ Տէր Աստուած ձեր։
4 Մի՛ երթայցէք զհետ կռոց, եւ աստ-
ուածս ձուլածոյս մի՛ առնիցէք ձեզ. ես
եմ Տէր Աստուած ձեր։
5 Եւ եթէ զոհիցէք զոհ [2]փրկութեան
Տեառն, զընդունելիսն ձեր զոհեսջիք։
6 Յաւուր յորում մատուցանիցէք՝ կերիցի,
եւ ի վաղիւ անդր. եւ եթէ մնասցէ մին-
7 չեւ ցօրն երրորդ, հրով այրեսցի։ Ապա
թէ ուտելով ուտիցի յաւուրն երրորդի,
8 [3]անզոհ է, մի՛ ընկալցի։ Եւ որ ուտիցէ
զայն՝ մեղս առցէ, զի զսրբութիւն Տեառն
պղծեաց, եւ սատակեսցին անձինքն որ
ուտիցեն՝ ի ժողովրդենէ իւրեանց։
9 Եւ ի հնձել հնձողաց ձերոց զհունձս
երկրին ձերոյ, մի՛ սպառիցէք զհունձս
անդոց ձերոց մօտ հնձելով. եւ զան-
10 կեալն ի հնձոց քոց մի՛ ժողովեսցես։ Եւ
զայգի քո ճռաքաղ մի՛ առնիցես, եւ
պտղաքաղ այգւոյ քո մի՛ լինիցիս. տնան-
կին եւ պանդխտին թողցես զայն. ես
եմ Տէր Աստուած ձեր։
11 Մի՛ գողանայցէք, եւ մի՛ ստիցէք, եւ

[1]Եբր. ի մօրէ և ի հօրէ [2]Եբր. խաղաղութեան
[3]Եբր. պիղծ

մի՛ զրպարտիցէք իւրաքանչիւր զընկեր
12 իւր։ Եւ մի՛ երդնուցուք սուտ յանուն
իմ, եւ մի՛ պղծիցէք զանուն [4]Տեառն Աս-
տուծոյ ձերոյ. ես եմ Տէր [4]Աստուած
13 ձեր"։ Մի՛ զրկեսցես զընկեր քո, եւ մի՛
յափշտակեսցես. մի՛ ագցին վարձք վարձ-
կանին առ քեզ մինչեւ ցառաւօտ։
14 [5]Զհամրն մի՛ զզուիցես. եւ առաջի կու-
րին գայթակղութիւն մի՛ դնիցես. եւ
երկնչիցիս [6]ի Տեառնէ Աստուծոյ" քում-
մէ. ես եմ Տէր [4]Աստուած քո"։
15 Անիրաւութիւն ի դատաստանի մի՛ առ-
նիցես, եւ ակն աղքատի մի՛ առնուցուս,
եւ մի՛ երեսաց աչառիցես հզօրի. ար-
դարութեամբ դատեսցիս զընկեր քո։
16 Եւ նենգութեամբ ընդ ազգի քում մի՛
գնասցես. յարիւն ընկերի քո մի՛ յօժա-
17 րիցես. ես եմ Տէր [4]Աստուած ձեր"։ Մի՛
ատեսցես զեղբայր քո ի մտի քում. յան-
դիմանութեամբ յանդիմանեսցես զընկեր
քո, եւ մի՛ ընդունիցիս վասն նորա զմեղս։
18 Մի՛ խնդրեսցէ վրէժ ձեռն քո. եւ ընդ
որդւոց ժողովրդեան քո ոխս մի՛ ունի-
ցիս, եւ սիրեսցես զընկեր քո իբրեւ
զանձն քո, զի ես եմ Տէր։
19 Զօրէնս իմ պահեսջիք. զանասուն
քո յօտարախառնս մի՛ խառնիցես. եւ
[7]զայգիս քո մի՛ վարեսցես այլեւայլ, եւ
[8]զձորձս երկպիսիս զարչելիս" մի՛ արկա-
նիցես զքեւ։
20 Եթէ ոք ննջեսցէ ընդ կնոջ արու-
թեամբ սերման, եւ նա իցէ աղախին
[9]պահեալ առն, եւ փրկանօք չիցէ փրկեալ
եւ ազատութեամբ չիցէ ազատեալ, հարց
եւ փորձ լիցի նոցա. եւ մի՛ մեռանիցին,
21 զի չիցէ ազատեալ։ Եւ մատուսցէ ընդ
յանցանացն իւրոց Տեառն առ դրան խո-
22 րանին վկայութեան խոյ յանցանաց։ Եւ
քաւեսցէ վասն նորա քահանայն խոյիւն
յանցանաց առաջի Տեառն վասն մեղացն
զոր մեղաւ, եւ թողցին նմա մեղքն զոր
մեղաւ։
23 Եւ յորժամ մտանիցէք յերկիրն [4]զոր
Տէր Աստուած տայ ձեզ", եւ տնկի-
ցէք զամենայն փայտ ուտելի, սրբեսջիք
զպղծութիւն նորա. եւ պտուղ նորա
զերեամ պիղծ լիցի ձեզ եւ մի՛ կերիցի։
24 Եւ յամին չորրորդի եղիցի ամենայն
պտուղ նորա սուրբ, օրհնեալ Տեառն։

[4]Յեբր. պակասէ [5]Կամ, Զխուլն [6]Եբր. յԱստու-
ծոյ [7]Եբր. զարտ [8]Եբր. ձորձ երկդիմի
այլայլախառն [9]Եբր. խօսեալ

25 Եւ յամին հինգերորդի կերիջիք զպտուղ
նորա . յաւելուած ձեզ լիցին բերք նո-
26 րա . ես եմ Տէր Աստուած ձեր : Ի վե-
րայ [1]լերանց մի՛ ուտիցէք . եւ մի՛ հմա-
յիցէք , եւ մի՛ հաւահարց եւ մի՛ հաւա-
27 գէտք լինիցիք : Ցցունս ի վարսից գլխոց
ձերոց մի՛ առնիցէք , եւ մի՛ ապականիցէք
28 զտեսիլ մօրուաց ձերոց : Եւ վէտս ի վե-
րայ ոգւոյ մի՛ առնիցէք ի մարմինս ձեր .
եւ գիր կռեալ մի՛ առնիցէք ի ձեզ , ես
եմ Տէր [2]Աստուած ձեր" :
29 Մի՛ պղծիցես զդուստր քո պոռնկեցու-
ցանելով զնա , զի մի՛ պոռնկեսցի եր-
կիրն , եւ լցցի երկիրն անօրէնութեամբ :
30 Զշաբաթս իմ պահեսջիք , եւ ի սրբու-
թեանց իմոց երկնչիջիք , [2]զի ես եմ Տէր :
31 Զհետ վհկաց մի՛ երթայցէք եւ ի գէտս
մի՛ յարիցիք պղծել նոքօք . ես եմ Տէր
Աստուած ձեր :
32 Առաջի ալեաց յառնիցես , եւ պատ-
ուեսցես զերեսս ծերոյն , եւ երկնչիցիս
յԱստուծոյ քումմէ . ես եմ Տէր [2]Աստ-
ուած քո" :
33 Եւ եթէ յարեսցի առ ձեզ եկ յերկրին
34 ձերում , մի՛ նեղիցէք զնա : Իբրեւ զբնակն
ձեր լինիցի ձեզ եկն յարեալ ի ձեզ ,
եւ սիրեսցես զնա իբրեւ զանձն քո . զի
պանդուխտք եղերուք եւ դուք յերկրին
Եգիպտացւոց . ես եմ Տէր Աստուած ձեր :
35 Մի՛ առնիցէք անիրաւութիւն ի դա-
տաստանի , ի չափս եւ ի կշիռս եւ ի
36 զոյգս : Զոյգք արդարք եւ կշիռք ար-
դարք , եւ [3]չափք արդարք , եւ կապիճ"
արդար լինիցի ձեր , ես եմ Տէր Աստուած
ձեր որ հանի զձեզ յերկրէն Եգիպտա-
37 ցւոց : Եւ պահեսջիք զամենայն զօրէնս
իմ եւ զամենայն զհրամանս իմ , եւ ա-
րասջիք զնոսա . զի ես եմ Տէր [2]Աստուած:

ԳԼ . Ի

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ ,
2 Խօսեաց ընդ որդիսդ Իսրայելի եւ ասաս-
ցես , Եթէ ոք յորդւոցդ Իսրայելի կամ
յեկելոց պանդխտացն Իսրայելի տացէ
[4]զսերմն իւր իշխանի", մահու մեռցի .
եւ ազգք երկրին քարկոծ արասցեն զնա
3 քարամբք : Եւ ես հաստատեցից զերեսս
իմ ի վերայ մարդոյն այնորիկ , եւ կո-
րուսից զնա ի ժողովրդենէ իւրմէ . զի
ետ [4]ի սերմանէ իւրմէ իշխանին" պղծել
զսրբութիւն իմ , եւ զարշեցուցանել զա-
4 նուն [5]սրբեցելոցն իմոց" : Ապա թէ սխ-
նածելով ակնածեսցեն բնակիչք երկրին
աչօք իւրեանց յառնէն յայնմանէ` ի տալ
նորա [4]զսերմն իւր իշխանին" չսպանանել
5 զնա , Հաստատեցից զերեսս իմ ի վերայ
առնն այնորիկ եւ ի վերայ ազգի նորա ,
եւ կորուսից զնա եւ զամենայն միա-
բանեալսն ընդ նմա առ ի պոռնկեցուցա-
նելոյ զնոսա ընդ [6]իշխանին` ի միջոյ ժո-
6 ղովրդեան իւրեանց : Եւ անձն որ երթիցէ
զհետ վհկաց կամ գիտաց` պոռնկել զկնի
նոցա , հաստատեցից զերեսս իմ ի վե-
րայ անձինն այնորիկ , եւ կորուսից զնա
7 ի ժողովրդենէ իւրմէ : Եւ սրբեսջիք եւ
եղիջիք սուրբք , զի [7]սուրբ եմ ես" Տէր
8 Աստուած ձեր : Եւ պահեսջիք զհրամանս
իմ եւ արասջիք զնոսա . ես եմ Տէր [2]Աստ-
ուած ձեր" որ սրբեմ զձեզ :
9 Մարդ ոք մարդ որ հայհոյեսցէ զհայր
իւր կամ զմայր իւր` մահու մեռցի . զհայր
իւր կամ զմայր իւր թէ բամբասեսցէ`
10 մահապարտ է : Եւ այր ոք եթէ շնասցի
ընդ առնակնոջ կամ շնայցէ ընդ կնոջ ըն-
կերի իւրոյ , մահու մեռցին եւ շնացողն
11 եւ շնացեալն : Եւ այր ոք որ ննջիցէ ընդ
կնոջ հօր իւրոյ , զառակմանս հօր իւրոյ
յայտնեաց . մահու մեռցին երկոքին , զի
ամպարշտեցան , եւ մահապարտք են :
12 Եւ եթէ ննջեսցէ ոք ընդ նուոյ իւրում ,
մահու մեռցին երկոքին , զի ամպարըշ-
13 տեցան եւ մահապարտք են : Եւ այր ոք
եթէ ննջեսցէ ընդ արուի զգործ կանա-
ցի , պղծութիւն գործեցին , մահու մեռ-
14 ցին երկոքին , զի մահապարտք են : Եւ
այր ոք որ առնուցու զկին եւ զմայր նո-
րա , անօրէնութիւն է , հրով այրեսցեն
զնա եւ զնոսա . եւ մի՛ լինիցի ի ձեզ ա-
15 նօրէնութիւն : Եւ այր ոք որ տացէ զա-
րութիւն իւր յանասուն` մահու մեռցի ,
16 եւ զանասունն սպանանիջիք : Եւ կին որ
մատչիցի յամենայն անասուն պղծել նմա
ի նմանէ , սպանանիջիք զկինն եւ զանա-
սունն . մահու մեռանիցին , զի մահա-
17 պարտք են : Եւ այր ոք որ առնուցու
զքոյր իւր զդուստր ի հօրէ կամ զդուստր ի մօ-
րէ , եւ տեսանիցէ զառակմանս նորա , եւ
նա տեսանիցէ զառակմանս նորա , նախա-

[1]Եբր. արեան [2]Եբր. Եհովա [3]Եբր. արդու ար-դար և հիմէն [4]Եբր. ի զաւակէ իւրմէ Մողո-քայ

[5]Եբր. սրբութեան իմոյ [6]Եբր. Մողոքայ [7]Եբր. ես եմ

տինք են . սատակեսցին յերեսաց որդւոց
ազգին իւրեանց . զի զառակմանս քեռ իւ-
րոյ յայտնեաց . [1]ընկալցին զմեղս իւ-
18 եանց՝՝։ Եւ այր որ ննջիցէ ընդ կնոջ դաշ-
տանի եւ յայտնեսցէ զառակմանս նորա ,
զի զաղբեւր արեան նորա յայտնեաց, եւ
նա՝ յայտնեաց զբղխումն արեան իւրոյ ,
սատակեսցին երկոքեան յազգէ իւրեանց։
19 Եւ զառակմանս հօրաքեռ քո եւ զմօրա-
քեռ քո մի՛ յայտնեսցես . զի զընտանու-
թեան առակմանս յայտնեցին , զմեղս իւր-
եանց տարցին , [2]եւ անորդիք մեռցին՝՝։
20 Եւ մարդ ոք որ ննջիցէ ընդ կնոջ [3]քեռ-
ւոյ իւրոյ , զառակմանս [3]քեռւոյ իւրոյ
յայտնեաց . զմեղս իւրեանց ընկալցին ,
21 եւ անորդիք մեռցին ։ Եւ մարդ ոք որ
առնուցու զկին եղբօր իւրոյ՝ պղծութիւն
է . զառակմանս եղբօր իւրոյ յայտնեաց .
անորդիք մեռցին ։
22 Եւ պահեսջիք զամենայն հրամանս իմ
եւ զամենայն զիրաւունս իմ , եւ արա-
ջիք զնոսա , եւ ոչ տաղտկասցի ձեզ
երկիրն յոր ես տարայց զձեզ բնակել ի
23 նմա ։ Եւ մի՛ գնայցէք ըստ օրինաց ազ-
գացն զորս մերժեցից ես ի ձէնջ . զի զայն
ամենայն արարին , եւ գարշեցայ ես ի
24 նոցանէն . Եւ ասացի ցձեզ , Դուք ժա-
ռանգեսջիք զերկիրն զայն , եւ ես տաց
ձեզ զնա ի ստացուած , երկիր որ բղխէ
զկաթն եւ զմեղր . ես եմ Տէր Աստուած
ձեր որ մեկնեցի զձեզ յամենայն ազգաց ։
25 Եւ զատուսջիք [2]զանձինս ձեր՝՝ ի մէջ ա-
նասնոց սրբոց եւ անսրբոց , եւ ի մէջ
թռչնոց սրբոց եւ անսրբոց . եւ մի՛ պղծի-
ցէք զանձինս ձեր անասնովք եւ թռչնովք
եւ ամենայն սողնովք երկրի , զոր ես
26 զատուցի ձեզ ի պղծութիւն ։ Եւ եղիջիք
ինձ սուրբք , զի սուրբ եմ ես Տէր [2]Աստ-
ուած ձեր՝՝, որ զատուցի զձեզ յամենայն
ազգաց լինել ինձ ։
27 Եւ այր կամ կին որ լինիցի վհուկ
կամ գէտ , մահու մեռցի . քարամբք քար-
կոծեցէք զնոսա զի մահապարտք են ։

## ԳԼ. ԻԱ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ ,
Խօսեաց ընդ որդիսդ Ահարոնի ընդ քա-
հանայս եւ ասասցես ցդոսա . զի մի՛
2 [4]պղծիցին յոգիս ազգի իւրեանց , կամ
յընտանի կամ ի դրացի իւրեանց . այլ
կամ ի հայր կամ ի մայր՝՝ կամ յուստերս
3 կամ ի դստերս կամ յեղբայր, կամ ի [5]քոյր
կամ ի դուստր մերձաւոր իւր՝ զոր առն
4 չիցէ առեալ , նոքօք [6]պղծեսցին ։ Եւ
մի՛ պղծեսցին վայրապար ի ժողովրդեան
5 իւրում ի պղծութիւն իւրեանց ։՝՝ Եւ մի՛
գերծուցուն զգլուխս իւրեանց [2]ի վերայ
մեռելոյ՝՝ ի կնաւութիւն , եւ [7]զանկիւն մօր-
ուաց մի՛ գերծուցուն , եւ ի մարմինս
6 իւրեանց վէրս մի՛ հատանիցեն . Զի սուրբ
լինիցին Աստուծոյ իւրեանց , եւ մի՛ գար-
շեցուսցեն զանուն Աստուծոյ իւրեանց ,
զի զզոհսն Տեառն , պատարագ Աստու-
ծոյ իւրեանց , նոքա մատուցանեն . եւ
7 եղիցին սուրբք ։ Կին պոռնիկ եւ պղծեալ
մի՛ առնուցուն . եւ զկին հանեալ յառնէ
իւրմէ մի՛ առնուցուն . զի սուրբ է Տեառն
8 Աստուծոյ իւրում ։ Եւ [8]սրբեսցէ զանձն ,
զի զպատարագն Տեառն Աստուծոյ ձե-
րոյ՝՝ նա մատուցանէ . սուրբ եղիցի , զի
9 սուրբ եմ ես Տէր՝ որ սրբեմ [9]զնոսա ։ Եւ
դուստր առն քահանայի , եթէ ի պոռն-
կութեան պղծեսցի , զանուն հօր իւրոյ
բամբասեաց . հրով այրեսցի ։
10 Եւ քահանայն մեծ յեղբարց իւրոց ,
յորոյ վերայ զգլխոյն արկեալ իցէ զեւղն
օծութեան եւ կատարեալ զձեռս նորա
զգենուլ զպատմուճանն , զգլուխ իւր մի՛
տարախուրեսցէ , եւ զհանդերձս իւր մի՛
11 պատառեսցէ . Եւ յանձն վախճանեալ մի՛
մտցէ . ի հայր իւր կամ ի մայր իւր մի՛
12 պղծիցի ։ Եւ ի սրբութենէ անտի մի՛
ելանիցէ , եւ մի՛ պղծեսցէ զսրբութիւն
Աստուծոյ իւրոյ . զի սուրբ եւղն օծու-
թեան որ յԱստուծոյ՝ ի վերայ նորա է .
13 [2]զի ես եմ Տէր ։ Նա կին կոյս յազգէ
14 իւրմէ առնուցու . Զայրի եւ զհանեալ եւ
զպոռնիկ մի՛ առնուցու . այլ կոյս յազգէ
15 իւրմէ առնուցու կին , Եւ մի՛ պղծեսցէ
զսերմն իւր ի ժողովրդեան իւրում . զի
ես եմ Տէր որ սրբեմ զնա ։
16 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ ,
17 Խօսեաց ընդ Ահարոնի եւ ասասցես , Այր
ոք յազգէ քումմէ , յամենայն ազգս ձեր ,

[1]Եբր. ընկալցի զմեղս իւր [2]Յ Եբր. [illegible] [3]Կամ, հօրեղբօր [4]Եբր. պղծիցի վասն ուրուք ի ժո-ղովրդեան իւրում, (2) Բայց եթէ վասն ազգա-կանի որ մերձաւոր իւր իցէ , ի մայր կամ ի հայր [5]Եբր. քոյր կոյս որ մերձաւոր իցէ նմա [6]Եբր. պղծեսցի ։ (4) Եւ մի՛ պղծեսցի , իշխան է ի ժողովրդեան իւրում, ի պղծել զանձն ։ [7]Եբր. զանկիւն [8]Եբր. սրբեսցես զնա , զի զհացն Աստուծոյ քո [9]Եբր. զձեզ

յորում իցէ արատ, մի՛ մատիցէ մա-
տուցանել [1]պատարագ Աստուծոյ իւրոյ.
18 Զի ամենայն այր յորում իցէ արատ՝ մի՛
մատիցէ, այր կաղ կամ կոյր կամ կարճ-
19 ունչ կամ ականջատ, կամ այր ձեռնբեկ
20 կամ ոտնբեկ, կամ սապատողն կամ [2]չիլ
կամ պտղակն, կամ այր յորում իցէ քոս
21 կամ քաղցկեղ կամ միորձի. Ամենայն
այր յորում իցէ արատ, ի զաւակէ Ահա-
րոնի քահանայի, մի՛ մերձեսցի մատու-
ցանել զոհս [3]Աստուծոյ քում". զի արատ
գոյ ի նմա, և զպատարագս Աստուծոյ
22 մի՛ մատիցի մատուցանել. [4]Զի պատա-
րագքն Աստուծոյ՝ սրբութիւնք սրբու-
թեանց են. ի՛ սրբութեանց անտի կե-
23 րիցէ. Բայց ի վարագոյրն մի՛ մերձեսցի,
և առ սեղանն մի՛ մատիցէ, զի արատաւոր
է, և մի՛ պղծեսցէ զսրբութիւն [5]Աս-
տուծոյ իւրոյ", զի ես եմ Տէր որ սրբեմ
24 զնոսա։ Եւ խօսեցաւ Մովսէս ընդ Ահա-
րոնի և ընդ որդիս նորա, և ընդ ամե-
նայն որդիսն Իսրայելի։

## Գլ. ԻԲ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի և ասէ,
2 Ասասցես ցԱհարոն և ցորդիս նորա, և
զգոյշ լինիցին սրբութեանց որդւոցն Իս-
րայելի, և մի՛ պղծեսցեն զանուն իմ
սուրբ, զոր նոքայն սրբեն ինձ. [6]զի ես
3 եմ Տէր։ Ասասցես ցնոսա, Յազգս ձեր
ամենայն այր յամենայն զաւակէ ձերմէ
որ մերձենայցէ ի սրբութիւնն, զոր
սրբիցեն որդիքն Իսրայելի Տեառն, և
պղծութիւն իւր ի նմա իցէ, սատակես-
ցի անձնն այն յերեսաց իմոց. [6]զի ես եմ
4 Տէր։ Եւ այր ոք ի զաւակէ Ահարոնի քա-
հանայի, եթէ բորոտ կամ սերմնակաթ
իցէ, ի սրբութեանց անտի մի՛ կերիցէ
մինչև սրբեսցի. և որ մերձեսցի յամե-
նայն պղծութիւն ոգւոյ, և կամ այր
5 յորմէ ելանիցէ արութիւն սերման, կամ
որ մերձենայցէ յամենայն սողուն պիղծ
[7]զոր պղծիցեն, կամ ի մարդ որով պղծի-
ցեն զնա" ըստ ամենայն պղծութեան նո-
6 րա, Անձն որ մերձենայցէ ի նա՝ պիղծ
լիցի մինչև ցերեկոյ, և մի՛ կերիցէ ի
սրբութեանց անտի, եթէ ոչ լուանայցէ

[1] Եբր. զհացն [2] Եբր. թզուկ [3] Եբր. Տեառն [4] Եբր. Զհացն Աստուծոյ իւրոյ ի սրբութեանց սրբութեան և ի [5] Եբր. իմ [6] Յեբր. պակաս [7] Եբր. որով պղծիցի, կամ ի մարդ որով պղծիցի

7 զմարմին իւր ջրով. Եւ մտանիցէ արե-
գակն, սուրբ լիցի, և ապա կերիցէ ի
սրբութեանց անտի, զի հաց նորա է այն։
8 Զմեռելոտի և զգազանաբեկ մի՛ ուտի-
ցէ՝ պղծել նմա նոքօք. [6]զի ես եմ Տէր։
9 Եւ պահեսցեն զպահպանութիւնս իմ, զի
մի՛ ընդունիցին վասն նոցա մեղս, և
մեռանիցին վասն այնորիկ, եթէ պղծի-
ցեն զնոսա. [6]զի ես եմ Տէր որ սրբեմ
զնոսա։
10 Եւ ամենայն օտարազգի մի՛ կերիցէ
զսրբութիւնս, պանդուխտ քահանա-
յին և վարձկանն մի՛ կերիցեն ի սրբու-
11 թեանցն։ Բայց թէ քահանայն ստասցի
ոգի ստացուածով արծաթոյ՝ նա կերիցէ
ի հացից անտի նորա. և ընտածինք նո-
12 րա կերիցեն ի հացից անտի նորա։ Եւ
դուստր առն քահանայի, եթէ լինիցի առն
այլազգւոյ, նա ի պտղոյ սրբութեանցն
13 մի՛ կերիցէ։ Եւ դուստր առն քահանայի,
եթէ լինիցի այրի կամ հանեալ, և զա-
ւակ ոչ իցէ նորա, և դառնայցէ անդրէն
ի տուն իւր հայրենի, ըստ մանկութեան
իւրում ի հացից անտի հօր իւրոյ կերի-
ցէ. և ամենայն այլազգի՝ մի՛ կերիցէ ի
նոյանէ։
14 Եւ մարդ որ յանգէտս կերիցէ զսըր-
բութիւնս, յաւելցէ ի նոյն զհինգերորդ
մասնն, և տացէ զսրբութիւնն ցքահա-
15 նայն։ Եւ մի՛ պղծեսցեն զսրբութիւնս
[6]սրբութեանցն որդւոցն Իսրայելի, զոր
16 զատուցին նոքա Տեառն. Եւ ածիցեն ի
վերայ իւրեանց անօրէնութիւն յանցա-
նաց, ուտելով իւրեանց զսրբութիւնս
[6]սրբութեանցն. զի ես եմ Տէր որ սրբեմ
զնոսա։
17 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի և ասէ,
18 Խօսեաց ընդ Ահարոնի և ընդ որդիս նո-
րա և ընդ ամենայն ժողովրդեան որ-
դւոցն Իսրայելի, և ասասցես ցնոսա,
Այր ոք այր յորդւոցն Իսրայելի, կամ յե-
կացն յարելոց ի նոսա ի մէջ Իսրայելի,
որ մատուցանիցէ զպատարագս իւր ըստ
ամենայն խոստովանութեանց իւրեանց,
կամ ըստ ամենայն կամաց իւրեանց զոր
ինչ մատուցանիցեն Տեառն [8]յողջակէզ
19 ընդունելի առ ի ձէնջ, Արու" անարատ
20 յանդւոց և յօդեաց և յայծեաց։ Զա-
մենայն արատաւորն մի՛ մատուցանիցեն

[8] Եբր. յողջակէզ, (19) Զի լինիցիք ընդունելի, եղիցի արու

[1]Տեառն, զի ոչ լինիցի ընդունելի առ ի
21 ձէնջ ։ Եւ այր որ մատուցանիցէ [2]զպա-
տարագս իւր ըստ ամենայն խոստովա-
նութեան իւրեանց, կամ ըստ ամենայն
կամաց իւրեանց զոհ փրկութեան Տեառն,
ուխտեալ ուխտ, կամ ըստ կամաց կամ
ի տօնս ձեր", յանդւոց կամ յոգեաց, ա-
նարատ լինիցի յընդունելութիւն. ամե-
22 նայն արատ մի՛ լիցի ի նմա ։ Զկոյրն կամ
զկաղն կամ զբեկն կամ [1]զլեզուատ կամ
զմարմառոտ կամ զքոսոտ կամ զորքի-
նոտ, մի՛ մատուցանիցեն զայն Տեառն.
եւ յողջակէզ ոչ տայցէք ի նոցանէ ի սե-
23 ղան Տեառն ։ Զարջառ եւ զոչխար [3]զա-
կանջատ կամ զկրճատ՝ քեզ արասցես ի
զենլիս", եւ յուխտս քո մի՛ լիցին ըն-
24 դունելի ։ Զթաղամասուորն եւ զմալեալն
եւ զքածաւարոտն եւ զհատեալն, մի՛
մատուցանիցես Տեառն. եւ յերկրի ձե-
25 րում մի՛ առնիցէք ։ Եւ ի ձեռանէ այլ-
ազգւոյն մի՛ մատուցանիցէք զպատա-
րագս Աստուծոյ ձերոյ յամենայնէ յայն-
պիսեաց անտի. զի խեղութիւնք եւ ա-
րատք են ի նոսա, եւ ոչ լինիցի այն ըն-
դունելի առ ի ձէնջ ։
26 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
27 Արջառ կամ ոչխար կամ այծ, յորժամ
ծնանիցին, կացցէ զեւթն օր ընդ մարբն.
եւ յօրէն ութերորդէ եւ անդր ընդունելի
28 լիցի ի պատարագ ընծայ Տեառն ։ Զար-
ջառ եւ զոչխար եւ զծնունդս իւրեանց
մի՛ սպանանիցէք ի միում աւուր ։
29 Եւ եթէ զոհեսցես զզոհ գոհութեան
Տեառն, զընդունելին առ ի ձէնջ զոհես-
30 ջիք. Ի նմին աւուր կերիցի, եւ մի՛ թո-
ղուցուք ի մսոյ անտի յայգ. [1]զի ես եմ
Տէր ։
31 Եւ պահեսջիք զպատուիրանս իմ, եւ
32 արասջիք զնոսա. [1]զի ես եմ Տէր ։ Եւ
մի՛ պղծիցէք զանուն իմ սուրբ՝ [1]զի ես
եմ Տէր." եւ սրբեցայց ի մէջ որդւոցն
Իսրայելի. ես եմ Տէր որ սրբեմ զձեզ,
33 Որ հանի զձեզ յերկրէն Եգիպտացւոց լի-
նել ձեզ Աստուած. ես եմ Տէր ։

## ԳԼ. ԻԳ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Խօսեաց ընդ որդիսն Իսրայելի եւ ասաս-
ցես ցնոսա, [4]Տօնս Տեառն զոր առնի-
ցէք, կոչեցեալք եւ սուրբք" այնք լիցին
3 իմ տօնք. Զվեց օր գործեսցես զգործ,
յաւուրն եւթներորդի շաբաթ [5]հանգիստ
անուանեալ սուրբ Տեառն". զամենայն
գործ մի՛ գործիցէք, զի շաբաթ Տեառն
է յամենայն բնակութեան ձերում ։
4 [6]Զի այն են տօնք Տեառն, եւ նոքա
անուանեալք են սուրբք զորս անուա-
5 նիցէք ի տօնս նոցա" ։ Յառաջնում ամ-
սեանն ի տասն եւ ի չորս ամսոյն ի մէջ
6 երեկորեայցն զատիկ Տեառն. Եւ յա-
ւուրն հնգետասաներորդի նորին ամսոյ՝
տօն բաղարջակերաց Տեառն. զեւթն օր
7 բաղարջ կերիջիք ։ [7]Եւ օրն առաջին ան-
ուանեալ" սուրբ եղիցի ձեզ. զամենայն
գործ սպասաւորութեան մի՛ առնիցէք ։
8 Եւ մատուսջիք ողջակէզս Տեառն զեւթն
օր, [8]եւ օրն եւթներորդ՝ սուրբ կոչեց-
եալ" լիցի ձեզ. զամենայն գործ սպա-
սաւորութեան մի՛ գործիցէք ։
9 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
10 Խօսեաց ընդ որդիսն Իսրայելի եւ ասաս-
ցես ցնոսա, Յորժամ մտանիցէք յերկիրն
զոր ես տաց ձեզ, եւ հնձիցէք զհունձս
նորա, բերիցէք զորայն, զպտուղ հնձոց
11 ձերոց, առ քահանայն. Եւ [9]հանցէ զո-
րայն առաջի Տեառն յընդունելութիւն
առ ի ձէնջ. եւ ի վաղիւ անդր [10]աւուրն
12 առաջնոյ հանցէ" զայն քահանայն ։ Եւ
[11]արասցէ յաւուրն յորում մատուցանիցէ
զորայն՝ ոչխար" անարատ տարեւոր յող-
13 ջակէզ Տեառն. Եւ զզոհն իւր երկուս
տասանորդս ի նաշհոյ զանգելոյ իւղով,
զոհ Տեառն ի հոտ անուշից [1]Տեառն. եւ
նուէր նորա՝ չորրորդ մասն [12]զորակի
14 գինւոյ. Եւ զհաց մի՛ եւ [13]զամենայն
մուրկ փխրեալ" մի՛ ուտիցէք մինչեւ յօրն
յորում մատուցանիցէք զպատարագս Աս-
տուծոյ ձերոյ. օրէն յաւիտենական յազգս
ձեր, յամենայն բնակութեան ձերում ։
15 Եւ համարեսջիք ձեզ ի վաղուէ շա-
բաթուն՝ յօրէ յորմէ մատուցանիցէք զո-
րայ [14]ուխտին, եւթն եւթներորդս բո-

[1]Յն. Եբր. [illegible] [2]Եբր. պատարագ խաղաղութեան Տեառն ի կատարել զուխտ կամ ընծայ կամաւոր [3]Եբր. որ ունիցի աւելի ինչ կամ պակաս՝ արասցես ընծայ կամաւոր

[4]Եբր. Տօնք Տեառն զորս կոչիցէք ժողովս սուրբս, [5]Եբր. հանգստեան՝ ժողով սուրբ [6]Եբր. Այս են տօնք Տեառն, ժողովք սուրբք զորս կոչիցէք ըստ ժամանակի իւրեանց [7]Եբր. յաւուրն յառաջնում ժողով [8]Եբր. յաւուրն եւթներորդի ժողով սուրբ [9]Եբր. երերեսցէ [10]Եբր. շաբաթուն երերեսցէ [11]Եբր. առնիցէք յաւուրն երերման որային ձերոյ որոջ մի [12]Կ—Ս. հիմնի [13]Եբր. մուրկ փխրեալ և հասկ նոր [14]Եբր. երերման

16 վանդակս Թուեցես ․ Մինչեւ ցվաղիւն
յետին եւթներորդին թուեցէք յիսուն օր,
եւ մատուցանիցէք զոհ նոր Տեառն ։
17 Ի բնակութենէ ձերմէ մատուցանիցէք
պանս [1]նուիրի, երկուս պանս ․ յերկուց
տասանորդաց լինիցի պան մի, խմորեալք
եփեսցին յառաջնոց արդեանց Տեառն ։
18 Եւ մատուցանիցէք ընդ հացին եւթն
որոջ անարատ տարեւոր, եւ զուարակ
մի յանդէոյ, եւ խոյս երկուս [2]անարատս,
եւ եղիցին յողջակէզ Տեառն, եւ զոհք
նոցա եւ նուէրք նոցա՝ զոհ ի հոտ անու-
19 շից Տեառն ։ Եւ առնիցէք նոխազ մի
յայծեաց վասն մեղաց, եւ երկուս գա-
ռինս տարեւորս ի զոհ խաղաղականաց
20 [2]ընդ պանից առաջնոց արմտեացն" ։ Եւ
[3]նուիրեսցէ զնոսա քահանայն նուէր"
ընդ պանից առաջնոց արմտեացն յանդի-
ման Տեառն հանդերձ երկու գառամբքն ․
սրբեսցին Տեառն, քահանային [2]որ մա-
21 տուցանիցէ զնոսա" եղիցին ։ Եւ [4]կոչես-
ջիք զօրն զայն անուանեալ կոչեցեալ,"
սուրբ եղիցի ձեզ ․ զամենայն գործ սպա-
սաւորութեան մի՛ գործիցէք ի նմա ․ օրէն
յաւիտենական եղիցի յազգս ձեր յամե-
նայն բնակութեան ձերում ։
22 Եւ յորժամ հնձիցէք զհունձս երկրի
ձերոյ, մի՛ առ հասարակ զնշխար հնձոց
անդոյն քո ի հնձել քում ամփոփիցես ․
եւ զանկեալն հնձոցն քոց մի՛ ժողովես-
ցես, այլ աղքատին եւ պանդխտին թո-
ղուցուս զայն ․ [2]զի ես եմ Տէր Աստուած
ձեր ։
23 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
24 Խօսեաց ընդ որդւոցն Իսրայէլի եւ ասաս-
ցես, Յամսեանն եւթներորդի որ օր մի
իցէ ամսոյն, եղիցի ձեզ հանգիստ, յի-
շատակ փողոց, [5]կոչեցեալ սուրբ Տեառն" ։
25 Զամենայն գործ սպասաւորութեան մի՛
գործիցէք, եւ մատուցանիցէք ողջակէզ
Տեառն ։
26 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
27 Ի տասներորդում աւուր ամսոյն եւթն-
երորդի, որ օրն քաւութեան է, [6]կո-
չեցեալ սուրբ եղիցի ձեզ ․ եւ խոնար-
հեցուսջիք զանձինս ձեր [2]յիններորդ օ-
րէն յերեկորեայ", եւ մատուսջիք ողջա-
28 կէզս Տեառն ։ Զամենայն գործ մի՛ գոր-
ծիցէք յաւուր յայնմիկ, զի օր քաւու-
թեան է նա ձեզ, քաւել վասն ձեր ա-
29 ռաջի Տեառն Աստուծոյ ձերոյ ։ [7]Ամենայն
անձն որ ոչ խոնարհեսցի յաւուր յայն-
միկ, սատակեսցի ի ժողովրդենէ իւրմէ ։
30 Եւ ամենայն անձն որ գործիցէ գործ յա-
ւուր յայնմիկ, կորիցէ անձն այն ի ժո-
31 ղովրդենէ իւրմէ ։ Զամենայն գործ մի՛
գործիցէք ․ օրէն յաւիտենական եղիցի
յազգս ձեր, յամենայն բնակութիւնս
32 ձեր ։ Շաբաթ շաբաթուց եղիցի ձեզ, եւ
խոնարհեցուսջիք զանձինս ձեր ․ յիննե-
րորդէ ամսեանն յերեկորեայ մինչեւ ցե-
րեկոյն շաբաթասջիք զշաբաթս ձեր ։
33 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
34 Խօսեաց ընդ որդւոցն Իսրայէլի եւ ասաս-
ցես, Ի հնգետասաներորդի աւուր ամ-
սեանն եւթներորդի տօն տաղաւարա-
35 հարաց զեւթն օր Տեառն ։ Եւ օրն ա-
ռաջին [6]կոչեցեալ սուրբ ․ զամենայն գործ
36 սպասաւորութեան մի՛ գործիցէք ։ Զեւթն
օր մատուցանիջիք [8]ողջակէզս Տեառն,
եւ օրն եւթներորդ կոչեցեալ," սուրբ ե-
ղիցի ձեզ, եւ մատուցանիցէք ողջակէզ
Տեառն ․ [9]քանզի ելք են" ․ զամենայն գործ
37 սպասաւորութեան մի՛ գործիցէք ։ Այս
են տօնք Տեառն՝ զորս կոչիցէք [10]կոչե-
ցեալ սուրբս, առ ի մատուցանելոյ [11]ըն-
ծայ Տեառն, զողջակէզս եւ զզոհս իւր-
38 եանց", եւ նուէրս օր ըստ օրէ, Առանց
շաբաթուց Տեառն, եւ առանց ընծայիցն
ձերոց, եւ առանց ամենայն ուխտիցն
ձերոց, եւ առանց կամայականացն ձե-
39 րոց զոր տայցէք Տեառն ։ Եւ ի հնգետա-
սաներորդում աւուր ամսոյն եւթնե-
րորդի յորժամ բովանդակիցէք զարդիւնս
երկրին, տօնեսջիք Տեառն զեւթն օր ․
յաւուրն առաջնում հանգիստ, եւ յա-
40 ւուրն ութերորդի հանգիստ ։ Եւ առնու-
ցուք ձեզ յաւուրն առաջնում պտուղս
զգեղեցիկ ծառոց, կողերս արմաւենեաց,
եւ ոստս ի տերեւախիտ ծառոց եւ յուռ-
ենաց [2]եւ ոստս հաղնեայ" ի ձորոց, ու-
41 րախ լինել առաջի Տեառն զեւթն օր ։ Եւ
տօնեսջիք զնա տօն Տեառն զեւթն օր
տարւոյն ․ օրէն յաւիտենական յազգս
ձեր, յամսեանն եւթներորդի տօնեսջիք
42 զնա ։ Ի տաղաւարս բնակեսջիք զեւթն

[1] Եբր. երերման [2] ՅԵբր. դ—ի—ե [3] Եբր. երերեսցէ զնոսա քահանայն [4] Եբր. կարդասջիք ի նմին իսկ աւուր․ ժողով [5] Եբր. ժողով սուրբ եղիցի [6] Եբր. ժողով

[7] Եբր. Զի ամենայն [8] Եբր. պատարագ Տեառն, յաւուրն ութերորդի ժողով [9] Եբր. տօն մեծ է այն [10] Եբր. ժողովս [11] Եբր. զպատարագ Տեառն, ողջակէզ եւ ընծայ հացի, զոհս

օր․ ամենայն բնակքն Իսրայէլի բնա-
43 կեսցեն ի տաղաւարս․ Զի գիտասցեն
ազգք ձեր, եթէ ի տաղաւարս բնակե-
ցուցի զորդիսն Իսրայէլի ի հանելն ինձ
զնոսա յերկրէն Եգիպտացւոց․ ես եմ
44 Տէր Աստուած ձեր։ Եւ պատմեաց Մով-
սէս զտօնս Տեառն որդւոցն Իսրայէլի։

## Գլ․ ԻԴ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Պատուիրեա որդւոցն Իսրայէլի, եւ առ-
ցեն քեզ եւղ ի ձիթենեաց սուրբ խա-
կակուռ ի լոյս, վառել ճրագ հանա-
3 պազորդ, Արտաքոյ վարագուրին ի խո-
րանին վկայութեան․ եւ [1]լուցցեն զայն
Ահարոն եւ որդիք նորա", յերեկորեայ
մինչեւ ցառաւօտ առաջի Տեառն հա-
պազ․ օրէն յաւիտենական յազգս ձեր։
4 Ի վերայ աշտանակին սրբոյ [2]այրիցէք ճրա-
գունս առաջի Տեառն [3]մինչեւ ցառաւօտ"։
5 Եւ [4]առնուցուք նաշիհ, եւ [5]առնիցէք
զայն երկոտասան սկան․ յերկուց տասա-
6 նորդաց լինիցի սկան մի։ Եւ [6]դնիցէք
զնոսա երկուս [7]նուէրս, վեց սկան զմի
նուէրն" ի վերայ սեղանոյն սրբոյ առաջի
7 Տեառն։ Եւ դիցես ի վերայ [8]նուիրին
կնդրուկ սուրբ [9]եւ աղ". եւ եղիցին ի
հաց յիշատակի [10]զառաջաւոր Տեառն։
8 Յաւուրն շաբաթուց դնիցէ առաջի Տեառն
հանապազորդ յորդւոցն Իսրայէլի ուխտ
9 յաւիտենական։ Եւ եղիցի Ահարոնի եւ
որդւոցն նորա, եւ կերիցեն զայն ի սուրբ
տեղւոջն․ զի սրբութիւն սրբութեանց է
այն նմա [11]ի զոհաւորացն Տեառն, օրէն
յաւիտենական։
10 Եւ ել որդի կնոջ Իսրայէլացւոյ, եւ
նա էր որդի առն Եգիպտացւոյ ի մէջ
որդւոցն Իսրայէլի․ եւ կռուեցան ի բա-
նակին [12]որ յԻսրայէլացւոց անտի էր" եւ
11 այր մի Իսրայէլացի․ Եւ [13]անուանեալ
որդի կնոջն Իսրայէլացւոյ զԱնունն՝ եւ
անէծ․ եւ ածին զնա առ Մովսէս․ եւ
անուն մօր նորա Սաղամիթ՝ դուստր
12 Դաբրեայ, յազգէ Դանայ։ Եւ արկին զնա
ի պահ, պատել զնա հրամանաւ Տեառն։
13 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
14 Հանէք զայն որ անէծն՝ արտաքոյ բա-
նակին, եւ դիցեն որք լուան զձեռս իւր-
եանց ի վերայ գլխոյ նորա, եւ քարկո-
15 ծեսցեն զնա ամենայն ժողովուրդն։ Եւ
ընդ որդիսն Իսրայէլի խօսեսցիս եւ ա-
սասցես ցնոսա, Այր ոք այր որ անիծա-
16 նիցէ [14]զԱստուած, մեղս ընկալցի․ Զի
անուանեալ" զանուն Տեառն՝ մահու մեռ-
ցի․ քարընկեցութեամբ քարկոծ արասս-
ցեն զնա ամենայն ժողովուրդն․ եթէ
պանդուխտ իցէ եւ եթէ բնակ, [15]յանուա-
նել նորա զանուն Տեառն, սատակեսցի։
17 Եւ մարդ որ հարկանիցէ զամենայն
անձն մարդոյ եւ մեռանիցի՝ մահու մեռցի
18 եւ նա։ Եւ որ հարկանէ զանասուն՝ անձն
19 ընդ անձին տուժեսցի․ Եւ եթէ խեղեսցէ
ոք զընկեր իւր, որպէս արարն՝ նոյնպէս
20 արասցի նմա․ Բեկումն ընդ բեկման,
ակն ընդ ական, ատամն ընդ ատաման․
որպէս առնիցէ ոք զխեղութիւն, նոյն-
21 պէս հատուսցի նմա։ Եւ որ հարկանիցէ
[16]զմարդ եւ մեռանիցի, մահու մեռցի եւ
22 նա։" Իրաւունք՝ մի եւ նոյն կացցեն ե-
կին եւ բնակին․ զի ես եմ Տէր Աստ-
ուած ձեր։
23 Եւ խօսեցաւ Մովսէս ընդ որդիսն Իս-
րայէլի, եւ հանին զայն որ անէծն՝ ար-
տաքոյ բանակին, եւ քարկոծ արարին
զնա [9]ամենայն ժողովուրդն" քարամբք․
եւ որդիքն Իսրայէլի արարին որպէս
պատուիրեաց Տէր Մովսիսի։

## Գլ․ ԻԵ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի ի լերինն
2 Սինայ եւ ասէ, Խօսեաց ընդ որդիսն Իս-
րայէլի եւ ասասցես ցնոսա, [17]Եթէ մտա-
նիցէք յերկիրն զոր ես տաց ձեզ, [18]եւ
հանգիցի երկիրն զոր տաց ձեզ, զի
3 շաբաթ Տեառն է"։ Զվեց ամ վարես-
ցես զանդ քո, եւ զվեց ամ յատեսցես
զայգի քո, եւ ժողովեսցես զպտուղ նո-
4 րա․ Յամին եւթներորդի շաբաթ հան-
գստեան եղիցի երկրին, զի շաբաթ Տեառն
է․ զանդ քո ոչ վարեսցես, եւ զայգի

[1] Եբր. յարդարեսցէ զնոսա Ահարոն [2] Եբր. յարդարեսցէ [3] Եբր. հանապազ [4] Եբր. առնուցուս [5] Եբր. առնիցես [6] Եբր. դիցես [7] Եբր. կարգս. վեց ի կարգի [8] Եբր. կարգացն [9] Յեբր. պակաս [10] Եբր. պատարագ [11] Եբր. ի պատարագաց [12] Եբր. որդին կնոջն Իսրայելացւոյ [13] Եբր. հայհոյեաց

[14] Եբր. զԱստուած իւր, եւ զմեղս իւր ընկալցի. (16) Եւ որ հայհոյէն [15] Եբր. ի հայհոյել [16] Եբր. զանասուն տուժեսցի. և որ հարկանիցէ զմարդ՝ սպանցի [17] Եբր. Յորժամ [18] Եբր. թող շաբաթասցի երկիրն շաբաթ Տեառն

5 քո ոչ յատցես . Եւ զինքնաբոյսն անդոյ քո
որ գայցէ՝ ոչ հնձեսցես , եւ զխաղող
սրբութեանն քո ոչ կթեսցես . զի ամ
6 հանգստեան է այն երկրին ։ Եւ եղիցի
շաբաթ երկրին ձերոյ , կերակուր՝ քեզ
եւ ծառայի քում , եւ աղախնոյ քում ,
եւ վարձկանին քում , եւ պանդխտին
7 յեկելոյ ի քեզ , Եւ անասնոյ քում , եւ
գազանաց որ իցեն յերկրին քում եղի-
ցի ամենայն բերն նորա ի կերակուր ։
8 Եւ թուեսցես դու քեզ եւթն հան-
գիստ ամաց՝ եւթն ամ եւթնեկին , եւ
եղիցին եւթն եւթներորդքն ամաց՝ քա-
9 ռասուն եւ ինն ամ ։ Եւ ազդ առնիցէք
բարբառով փողոյ [1]յամենայն երկրին ձե-
րում‶, յամսեանն եւթներորդի որ օր տասն
իցէ ամսոյն , յաւուրն քաւութեան ազդ
արասջիք փողով ընդ ամենայն երկիրն
10 ձեր ։ Եւ սրբեսջիք զամն յիսներորդ
տարւոյն , եւ քարոզեսջիք թողութիւն
ի վերայ երկրին ամենայն բնակչաց նո-
րա . զի [2]տարի թողութեան‶ եղիցի ձեզ
այն [1]ազատութիւն , եւ դարձցի իւրա-
քանչիւր ոք ի ստացուած իւր , եւ իւրա-
քանչիւր ոք յազգ իւր երթիցէ. [1]զի թո-
11 ղութեան ազատութիւն է այն‶ Ամն յիս-
ներորդ՝ եղիցի ձեզ [3]տարեկան. մի՛ սեր-
մանիցէք , եւ մի՛ հնձիցէք զինքնաբոյս
նորա որ եկանիցեն , եւ մի՛ կթիցէք
12 զսրբեցեալս նորա . Զի [2]թողութեան
ազատութիւն‶ է , սուրբ լիցի ձեզ . ի
13 դաշտաց կերիջիք զարմտիս նորա ։ [4]Յամին
ազատութեան թողութեան նորա‶ դարձ-
ցի իւրաքանչիւր ոք ի ստացուած իւր ։
14 Ապա թէ վաճառեսցէ ոք վաճառ ընկե-
րի իւրում , եւ ստասցի յընկերէ իւրմէ ,
15 մի՛ նեղեսցէ այր զընկեր իւր . Ըստ
թուոյ ամացն յետ [5]ազատութեանն
ստասցի յընկերէ իւրմէ , ըստ թուոյ ա-
16 մաց արմտեացն վաճառեսցի քեզ ։ Ըստ
յաճախելոյ ամացն [6]յաճախեսցէ զստաց-
ուածս իւր‶ եւ ըստ պակասելոյ ամացն
[7]պակասեցուսցէ զստացուածս իւր‶ .
զի ըստ թուոյ արդեանցն վաճառեսցէ
17 նա քեզ ։ Մի՛ նեղեսցէ այր զընկեր իւր ,
եւ երկնչիցիս [8]ի Տեառնէ Աստուծոյ‶
քումմէ . ես եմ Տէր Աստուած ձեր ։
18 Եւ արասջիք զամենայն իրաւունս իմ
եւ զամենայն դատաստանս իմ , եւ պահես-
ջիք եւ արասջիք զնոսա , եւ բնակեսջիք
19 յերկրին [9]յուսով ։ Եւ տացէ երկիրն զբերս
իւր , եւ կերիջիք ցյագ . եւ բնակեսջիք
20 ի նմա վստահութեամբ ։ Ապա թէ ասի-
ցէք , Զի՞նչ կերիցուք յամին եւթներորդի
յայնմիկ , եթէ ոչ սերմանիցեմք եւ ոչ
21 ժողովիցեմք զարմտիս մեր . Առաքեցից
զօրհնութիւն իմ ի ձեզ յամին վեցերորդի ,
եւ արասցէ զարդիւնս իւր երից ամաց ։
22 Եւ սերմանեսջիք յամին ութերորդի ,
եւ կերիջիք զհին արդեանցն մինչեւ ցամն
իններորդ . մինչեւ գայցեն արմտիք նո-
րա , կերիջիք հին ի հնոյ ։
23 Եւ երկիրն ոչ վաճառեսցի [10]ի հաս-
տատութիւն . զի իմ է երկիրն . քանզի
պանդուխտք եւ նժդեհք էք դուք ա-
24 ռաջի իմ ։ Եւ ըստ ամենայն երկրին
կալուածոյ ձերոյ՝ փրկանս տաջիք [11]երկ-
25 րին ։ Եւ եթէ աղքատասցի եղբայր քո
որ ընդ քեզ իցէ , եւ վաճառեսցէ ի կալ-
ուածոց իւրոց , եւ եկեսցէ մերձաւորիչն
որ մերձաւոր իցէ նորա , եւ փրկեսցէ
26 զվաճառ եղբօր իւրոյ ։ Ապա թէ չիցէ
ուրուք մերձաւորիչ , եւ ձեռնհաս իցէ ,
եւ գտանիցի նմա բաւական փրկանացն
27 իւրոց , Եւ համարիցի զամս վաճառին
իւրոյ , եւ հատուսցէ [12]կարողն առնն ո-
րում վաճառեաց նմա , եւ դարձցի ի
28 կալուածս իւր ։ Ապա թէ ոչ գտցի ի
ձեռին նորա բաւականն առ ի հատու-
ցանելոյ նմա , եղիցի վաճառ նորա այնմ
որ ստացաւ զնա մինչեւ յամն [2]թո-
ղութեան . եւ ելցէ յամին [13]թողութեան
եւ դարձցի անդրէն ի կալուածս իւր ։
29 Եւ եթէ վաճառեսցէ ոք տուն բնա-
կութեան ի պարսպաւոր քաղաքի , եղի-
ցին փրկանք նորա մինչեւ ի կատարել
տարւոյն աւուրցն վաճառի նորա . օրա-
30 թուի լինիցին փրկանք նորա ։ Ապա թէ
ոչ փրկիցի մինչեւ լնուցու նորա տարին
ողջոյն , հաստատեսցի տունն որ իցէ ի
պարսպաւոր քաղաքի հաստատութեամբ՝
ստացողին իւրոյ յազգս իւր . եւ մի՛ ելցէ
31 ի [5]թողութեանն ։ Իսկ տունք, որ յաւանս
իցեն , որոց պարիսպ ոչ զուցէ շուրջա-
նակի , ընդ անդս երկրի համարեսցին ,
եւ հանապազ ընդ փրկանօք լինիցին .
32 եւ ի [5]թողութեանն ելցեն ։ Եւ ի քա-

[1] Յեբր. դոխոռ [2] Եբր. յոբելեան [3] Եբր. ամ յոբելեան [4] Եբր. Յամի ամս յոբելենի [5] Եբր. յոբելենին [6] Եբր. յաճախեսցես զգին նորա [7] Եբր. պակասեցուսցես զգին նորա [8] Եբր. յԱստուծոյ

[9] Եբր. վստահութեամբ [10] Եբր. ի սպառ [11] Եբր. վասն երկրին [12] Եբր. զմնացորդն [13] Եբր. յոբելենի

զաքս Ղեւտացւոց տունք որ ի քաղաքս
կալուածոց նոցա իցեն՝ ընդ փրկանօք
լինիցին հանապազ [1]որ ի մէջ Ղեւտաց-
33 ւոցն իցէ"։ Եւ որ ոք փրկեսցէ ի Ղեւտաց-
ւոց անտի, ելցէ վաճառ տանց քաղա-
քաց կալուածոց նոցա ի [2]Թողութեանն.
զի տունք քաղաքացն Ղեւտացւոց կա-
լուածք նոցա են այն ի մէջ որդւոցն Իս-
34 րայելի։ Եւ ագարակքն [3]զատուցեալք ի
քաղաքս" նոցա՝ մի՛ վաճառեսցին. զի
կալուած յաւիտենական է այն նոցա։
35 Եւ եթէ աղքատանայցէ եղբայր քո եւ
տկարանայցէ ձեռօք, առ քեզ պատսպա-
րեսցես զնա իբրեւ զեկն եւ զպանդուխտ.
եւ կեցցէ եղբայրն քո որ ընդ քեզն իցէ։
36 Մի՛ առնուցուս ի նմանէ վաշխ եւ տո-
կոսիս. եւ երկնչիցիս [4]ի Տեառնէ Աստու-
ծոյ քումմէ, զի ես եմ Տէր". եւ կեցցէ
37 եղբայր քո ընդ քեզ։ Զարծաթ քո մի՛
տացես նմա ընդ տոկոսեօք, եւ զկերա-
կուր քո մի՛ տացես նմա ընդ չարիսաիւ։
38 Ես եմ Տէր Աստուած ձեր, որ հանի զձեզ
յերկրէն Եգիպտացւոց՝ տալ ձեզ զերկիրն
Քանանացւոց, առ ի լինելոյ ձեր Աստուած։
39 Եւ եթէ տնանկասցի եղբայր քո առ քեզ
եւ վաճառեսցի քեզ, մի՛ ծառայեսցէ քեզ
40 զծառայութիւն ստրկի. Իբրեւ զվարձ-
կան, իբրեւ զպանդուխտ եղիցի քեզ,
մինչեւ յամն [5]Թողութեան գործեսցէ առ
41 քեզ. Եւ ելցէ [6]ի Թողութեանն ինքն եւ
որդիք իւր ընդ իւր, եւ դարձցի յազգ
իւր, եւ ի հայրենի կալուած իւր երթի-
42 ցէ։ Զի ծառայք իմ են նոքա զորս ես
հանի յերկրէն Եգիպտացւոց. մի՛ վաճա-
43 ռեսցին ի վաճառ ստրկի։ Եւ մի՛ տառա-
պեցուսցես զնա ընդ աշխատութեամբ.
եւ երկնչիցիս [4]ի Տեառնէ Աստուծոյ քում-
44 մէ"։ Եւ ծառայ կամ աղախին որչափ եւ
լինիցին քեզ՝ յազգացն որ շուրջ զքեւն
45 իցեն, ի նոցանէ ստասջիք։ Եւ յորդւոց
պանդխտացն որ ի միջի ձերում իցեն,
ի նոցանէ ստանայցէք, եւ յազգականաց
նոցա որչափ ինչ լինիցին յերկրին ձերում՝
46 եղիցին ձեզ ի կալուածս. Եւ բաժանես-
ջիք զնոսա որդւոց ձերոց յետ ձեր, եւ
եղիցին ձեզ ստրուկք յաւիտեան. բայց
յեղբարց ձերոց յորդւոցն Իսրայելի՝ իւ-
րաքանչիւր ոք զեղբայր իւր մի՛ տառա-
պեցուցանիցէք աշխատութեամբ։

[1]Եբր. Ղեւտացւոյն [2]Եբր. յոբելենին [3]Եբր. արուարձանաց քաղաքաց [4]Եբր. յԱստուծոյ քումմէ [5]Եբր. յոբելեան [6]Եբր. առ ի քէն

47 Եւ եթէ բաւական իցէ ձեռն եկին եւ
պանդխտին որ առ քեզ իցէ, եւ չքա-
ւորեալ եղբայր քո վաճառեսցի եկին կամ
պանդխտին որ առ քեզ իցէ՝ անգէն ծնե-
48 լոյ պանդխտին, Յետ վաճառելոյն նորա
փրկանք լինիցին նմա. մի ոք որ եւ իցէ
49 յեղբարց իւրոց՝ փրկեսցէ զնա. Եղբայր
հօր կամ որդի հօրեղբօր փրկեսցէ զնա,
կամ ոք յընտանեաց մարմնոյ իւրոյ ի
ցեղէ իւրմէ փրկեսցէ զնա. ապա թէ
իւր իսկ զձեռամբ իցէ՝ ինքնին փրկեսցէ
50 զանձն։ Եւ համարեսցի ընդ ստացողին
իւրոյ յամէ անտի յորում վաճառեցաւ
նմա մինչեւ ցամն [5]Թողութեան. եւ ե-
ղիցի արծաթ գնոյ նորա իբրեւ վարձ-
կանի, ամ յամէ որչափ իցէ ընդ նմա.
51 Եւ եթէ [7]աւելի եւս քան զայն ամս կայցէ,
տացէ" զփրկանս իւր յարծաթոյ [8]ստաց-
52 ուածոյն իւրոյ. Եւ եթէ սակաւ ինչ կայցէ
յամաց անտի մինչեւ ցամն [5]Թողութեան,
համարեսցի իւր ըստ ամացն իւրոց, եւ
53 տացէ զփրկանս իւր։ Իբրեւ զվարձկան
ամ յամէ [9]որչափ եւ" իցէ ընդ նմա.
մի՛ տառապեցուցանիցէ զնա աշխատու-
54 թեամբ առաջի քո։ Ապա թէ ոչ փրկեսցէ
ըստ այսմ օրինակի, ելցէ յամին [10]Թողու-
թեան ինքն եւ որդիք իւր ընդ նմա.
55 Զի իմ են որդիքն Իսրայելի ստրուկք,
ծառայք իմ՝ զորս հանի յերկրէն Եգիպ-
տացւոց. ես եմ Տէր Աստուած ձեր։

## ԳԼ. ԻԶ

1 Մի՛ առնիցէք ձեզ [11]ձեռագործս կամ
դրօշեալս, եւ մի՛ կանգնիցէք ձեզ ար-
ձան, եւ մի՛ քարկոթող դնիցէք յերկրի
ձերում երկիր պագանել նմա. ես եմ
Տէր Աստուած ձեր։
2 Զշաբաթս իմ պահեսջիք, եւ ի սրբու-
թեանց իմոց երկնչիջիք. [9]զի ես եմ Տէր։
3 Եթէ ըստ հրամանաց իմոց գնայցէք,
եւ զպատուիրանս իմ պահիցէք եւ առ-
4 նիցէք զնոսա, Տաց ձեզ անձրեւ ի ժա-
մանակի իւրում, եւ երկիրն տացէ զար-
մտիս իւր, եւ ծառք դաշտաց տացեն
5 զպտուղս իւրեանց. Եւ հասանիցեն ձեր
կալք ի կութս, եւ կութք ի սերմանս
հասանիցեն, եւ կերիջիք զհաց ձեր ցյագ,
եւ բնակեսջիք անհոգութեամբ յերկրի

[7]Եբր. տակաւին բազում ինչ կայցէ յամացն, ըստ այնմ տացէ [8]Եբր. գնոյն [9]Յեբր. պակասէ [10]Եբր. յոբելենի [11]Եբր. կուռս

6 ձերում։ Եւ տաց խաղաղութիւն յերկրին
ձերում, եւ ննջիցէք, եւ ոչ ոք իցէ որ
զարհուրեցուցանիցէ զձեզ. եւ կորուսից
զգազանս չարս յերկրէ ձերմէ. եւ պա-
7 տերազմ մի՛ անցցէ յերկիր ձեր։ Եւ հա-
լածեսջիք զթշնամիս ձեր, եւ անկանի-
8 ցին առաջի ձեր սպանմամբ։ Եւ հալա-
ծիցեն ի ձէնջ հինգք զհարեւր, եւ հա-
րեւրք ի ձէնջ հալածեսցեն զբեւրս, եւ
անկանիցին թշնամիք ձեր առաջի ձեր
9 սրով։ Եւ հայեցայց ի ձեզ, եւ աճեցու-
ցից զձեզ եւ բազմացուցից զձեզ, եւ
10 հաստատեցից զուխտ իմ ընդ ձեզ։ Եւ
կերիջիք զհին եւ զհնոյ հին, եւ զհինն
11 յերեսաց նորոյն հանիջիք ի բաց։ Եւ հաս-
տատեցից [1]զուխտ իմ ի ձեզ. եւ ոչ զար-
12 շեսցի անձն իմ ի ձէնջ. Եւ գնացից ի
ձեզ, եւ եղէց ձեր Աստուած, եւ դուք
13 եղիջիք ինձ ի ժողովուրդ։ Ես եմ Տէր
Աստուած ձեր որ հանի զձեզ յերկրէն
Եգիպտացւոց, մինչ էիք դուք ծառայք.
եւ խզեցի զկապանս լծոյն ձերոյ, եւ
[2]ածի զձեզ համարձակութեամբ՝։
14 Ապա թէ ոչ լսիցէք ինձ, եւ ոչ առ-
նիցէք զամենայն հրամանս իմ զայսո-
15 սիկ, Այլ հեստիցէք սոցա, եւ յիրաւանց
իմոց ապստամբեսցեն անձինք ձեր, առ ի
չառնելոյ ձեզ զամենայն զպատուիրանս
16 իմ եւ ցրելոյ զուխտն իմ, Արարից նոյն-
պէս եւ ես ձեզ. հաստատեցից ի վերայ
ձեր տագնապաւ ապականուսանս, զքոս
եւ զդալուկն որ սպեցուցանիցեն զաչս
ձեր, եւ հաչիցէք յանձինս ձեր, եւ սեր-
մանեսջիք ի նանիր զսերմանիս ձեր, եւ
17 զայն հակառակորդք ձեր կերիցեն. Հաս-
տատեցից զերեսս իմ ի ձեզ, եւ անկա-
նիջիք առաջի թշնամեաց ձերոց, եւ հա-
լածեսցեն զձեզ ատելիք ձեր, եւ լինի-
ջիք փախստեայք առանց ուրուք հալա-
18 ծելոյ զձեզ։ Եւ եթէ տակաւին ոչ լսի-
ցէք ինձ՝ յաւելից խրատել զձեզ եւթնպա-
19 տիկ ի վերայ մեղացն ձերոց։ Եւ խոր-
տակեցից զհպարտութիւն ամբարտաւա-
նութեանց ձերոց. եւ արարից ձեզ զեր-
կինս երկաթի եւ զերկիր ձեր իբրեւ
20 պղինձ։ Եւ եղիցի ընդունայն զօրու-
թիւն ձեր. եւ մի՛ տացէ երկիր ձեր զսեր-
մանիս իւր, եւ մի՛ ծառ վայրաց տացէ
զպտուղ իւր։
21 Եւ եթէ տակաւին գնայցէք դուք խո-
տորնակս, եւ ոչ կամիցիք լսել ինձ,
յաւելից ձեզ հարուածս եւթնպատիկ ըստ
22 անօրէնութեան ձերում։ Եւ առաքեցից
ի վերայ ձեր զգազանս չարս երկրի, եւ
[3]կերիցեն զձեզ, եւ սատակեսցեն զա-
նասունս ձեր, եւ նուազունս [4]արարից
զձեզ. եւ կորուսցին ճանապարհք ձեր։
23 Ապա թէ այնու եւս ոչ խրատիցիք, այլ
տակաւին խոտորնակս գնայցէք ընդ իս,
24 Գնացից եւ ես ընդ ձեզ [5]բարկութեամբ
խոտորնակս. եւ հարից զձեզ եւթնպա-
25 տիկ փոխանակ մեղաց ձերոց։ Եւ սա-
տակեցից զձեզ սրով խնդրել զվրէժ ուխ-
տին. եւ թէ ամրանայցէք ի քաղաքս
ձեր, առաքեցից մահ ի ձեզ, եւ մատ-
26 նեսջիք ի ձեռս թշնամեաց։ Ի նեղել զձեզ
ռոճկաւ հացի, եփեսցեն տասն կին զհացն
ձեր ի միում թոնրի, եւ տացեն զհաց
ձեր կշռով. եւ կերիջիք եւ մի՛ յագեսջիք։
27 Եւ եթէ այնու եւս ոչ լսիցէք ինձ,
28 այլ գնայցէք ընդ իս խոտորնակս, Եւ ես
գնացից ընդ ձեզ բարկութեամբ խոտոր-
նակս, եւ խրատեցից զձեզ եւթնպատիկ
29 ըստ մեղաց ձերոց. Եւ կերիջիք զմար-
մինս ուստերաց ձերոց, եւ զմարմինս
30 դստերաց ձերոց կերիջիք։ Եւ կործանե-
ցից [6]զարձանս ձեր, եւ աւերեցից զփայ-
տեղէն ձեռագործս ձեր՝, եւ արկից զդիս
ձեր զդիակամբք կռոց ձերոց, եւ զար-
31 շեսցի անձն իմ ի ձէնջ։ Եւ արարից զքա-
ղաքս ձեր աւերակս, եւ թափուր ա-
րարից զսրբութիւնս ձեր, եւ ոչ հոտո-
32 տեցայց ի հոտ զոհից ձերոց։ Եւ աւե-
րեցից զերկիրն ձեր, եւ զարմասցին ընդ
նա թշնամիքն ձեր որ բնակեալ իցեն ի
33 նմա։ Եւ ցրուեցից զձեզ ընդ ազգս, եւ
սատակեսցէ զձեզ սուրն եկեալ ի վե-
րայ, եւ եղիցի երկիրն ձեր աւերակ եւ
34 քաղաքք ձեր թափուրք։ Յայնժամ հա-
ճեսցի երկիրն ընդ շաբաթս իւր զամե-
նայն աւուրս աւերածոյն իւրոյ, եւ դուք
եղիջիք յերկրին թշնամեաց ձերոց՝ յերկիր
օտար. յայնժամ շաբաթասցի երկիրն,
35 եւ հաճեսցի ընդ շաբաթս իւր. Զամե-
նայն աւուրս աւերածոյն իւրոյ շաբա-
թասցի զշաբաթն զոր ոչ շաբաթացաւ
ի շաբաթս ձեր՝ ի ժամանակի յորում
36 բնակէիքն ի նմա։ Եւ ի վերայ մնացե-
լոցն ի ձէնջ ածից զողումն ի սիրտս նոցա
յերկրի թշնամեացն իւրեանց. եւ հալա-

[1]Օրէ. զխորան [2]Օրէ. ետու ձեզ գնալ ուղղորդ

[3]Օրէ. անզաւակեսցեն [4]Օրէ. արասցեն [5]Յօրէ. պակասէ [6]Օրէ. զբարձունս ձեր, եւ աւերեցից զպատկերս ձեր արեգական

ծնեցէ զնոսա ձայն տերեւոյ խարխա-
փելոյ, եւ փախիցեն որպէս որ փախչի-
ցին ի պատերազմէ, եւ անկանիցին ա-
37 ռանց ուրուք հալածելոյ։ Եւ թողցէ
եղբայր զեղբայր իւր իբրեւ ի պատե-
րազմի՝ առանց ուրուք զհետ մտանելոյ,
եւ ոչ կարիցէք ընդդէմ դառնալ թշնամ-
38 եաց ձերոց։ Եւ կորնչիցիք ի մէջ ազ-
գաց, եւ կերիցէ զձեզ երկիրն թշնամ-
39 եաց ձերոց։ Եւ մնացեալքն ի ձէնջ սա-
տակեսցին վասն մեղաց իւրեանց յերկրի
թշնամեաց իւրեանց, եւ վասն մեղաց
հարց իւրեանց՝ որ ընդ նոսա մաշեսցին։
40 [1]Եւ խոստովան լինիցին զմեղս իւր-
եանց եւ զհարց իւրեանց, զի յանցեան
եւ արհամարհեցին զիս, եւ զի գնացին
41 առաջի իմ խոտորնակս, Եւ ես գնացից
ընդ նոսա [2]բարկութեամբ խոտորնակս,
եւ [3]կորուսից զնոսա յերկրի" թշնամեաց
իւրեանց, յայնժամ ամաչեսցէ սիրտ նո-
ցա անթլփատ, եւ յայնժամ հաճեսցին
42 ընդ [4]մեղս իւրեանց, Եւ յիշեցից զուխտն
Յակոբայ եւ զուխտն Իսահակայ, եւ
զուխտն Աբրահամու յիշեցից, եւ զեր-
կիրն յիշեցից։
43 Եւ երկիրն լքցի ի նոցանէ. յայնժամ
ընկալցի երկիրն զշաբաթս իւր՝ յաւերել
նորա վասն նոցա, եւ նոքա ընկալցին
զանօրէնութիւնս իւրեանց, փոխանակ
զի զիրաւունս իմ արհամարհեցին, եւ
ի հրամանաց իմոց տաղտկացաւ անձն
44 նոցա։ Եւ ես՝ մինչդեռ [5]էին յերկրի
թշնամեաց իւրեանց, ոչ անտես [6]արարի
զնոսա, ու ոչ [7]տաղտկացայ նոքօք առ
ի սատակելոյ զնոսա՝ ցրել զուխտ իմ որ
ընդ նոսա. զի ես եմ Տէր Աստուած
45 նոցա. Եւ յիշեցից զառաջին ուխտն
նոցա, յորժամ հանի զնոսա յերկրէն
Եգիպտացւոց [2]ի տանէ ծառայութեան",
առաջի ամենայն ազգաց՝ լինել նոցա
Աստուած. զի ես եմ Տէր։
46 Այս են իրաւունք եւ հրամանք եւ օ-
րէնք, զոր ետ Տէր ի մէջ իւր եւ ի մէջ
որդւոցն Իսրայելի ի լերինն Սինայ ի
ձեռն Մովսիսի։

ԳԼ. ԻԷ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Խօսեաց ընդ որդիսն Իսրայելի եւ ասաս-
ցես զնոսա, Որ ոք ուխտեսցէ ուխտ՝
3 տալ զգինս անձին իւրոյ Տեառն, Եղի-
ցին գինք արուի, ի քսանամենից մին-
չեւ ցվաթսնամեանս, եղիցին գինք նորա
յիսուն [8]երկդրամեան արծաթոյ ըստ
4 սրբութեան սկեղն. Եւ իգին լիցին գինք՝
5 երեսուն [8]երկդրամեան։ Ապա թէ ի հնգ-
ամենից մինչեւ ցքսանամեանս, լինի-
ցին գինք արուին քսան [8]երկդրամեան,
6 եւ իգին տասն [8]երկդրամեան։ Եւ յամ-
սօրէէն մինչեւ ցհնգեմեանն՝ եղիցի
արուին հինգ [8]երկդրամեան արծաթոյ,
եւ իգին երեք [8]երկդրամեանք արծա-
7 թոյ։ Ապա թէ ի վաթսնամենից եւ ի վեր
իցէ, եթէ արու իցէ, եղիցին գինք նորա
հնգետասան [8]երկդրամեան արծաթոյ, եւ
8 իգին՝ տասն [8]երկդրամեան։ Ապա թէ
աղքատ իցէ ի գնոցն, կացցէ առաջի
քահանային, եւ հատցէ նմա քահանայն
գին, եւ որչափ ինչ ի կարի իցէ ի ձեռին
ուխտաւորին՝ արկցէ նմա գինս քահանայն։
9 Եւ եթէ յանասնոց մատուցանելեաց
Տեառն իցէ պատարագն, որչափ ինչ
10 տացէ ի նոցանէ Տեառն՝ սուրբ լիցի. Եւ
մի՛ փոխանակեսցէ զբարին ընդ յոռւոյն,
եւ մի՛ զյոռին ընդ բարին. ապա թէ
փոխանակելով փոխանակեսցէ զայն ա-
նասուն ընդ անասնոյ, եղիցի եւ այն եւ
11 փոխանակն սուրբ։ Ապա թէ յամենայն
անասնոց անսրբոց իցէ յորոց ոչ մատ-
չիցի պատարագ Տեառն, կացուսցէ զա-
12 նասունն առաջի քահանային. Եւ արկցէ
նմա գինս քահանայն ի մէջ բարւոյն եւ
յոռւոյն. եւ որպէս զիարդ արկցէ նմա
13 գինս քահանայն՝ այն կացցէ։ Իսկ եթէ
փրկելով փրկեսցէ զնա, եւ զհինգերորդ
մասն գնոց նորա յաւելցէ ի նոյն։
14 Եւ մարդ ոք որ սրբեսցէ զտուն իւր
սրբութիւն Տեառն, արկցէ նմա գինս
քահանայն ի մէջ բարւոյն եւ յոռւոյն. եւ
որպէս զիարդ արկցէ նմա գինս քահա-
15 նայն, նոյն կացցէ։ Ապա թէ որ սրբեացն
զնա փրկեսցէ զտունն իւր, յաւելցէ եւ
զհնգերորդ արծաթոյ գնոցն ի նոյն, եւ
նմին իւր եղիցի։
16 Եւ եթէ յանդոյ կալուածոց իւրոց
սրբեսցէ ոք ինչ Տեառն, եղիցին գինք
նորա ըստ սերման իւրում. քոռի միոջ
գետնոյ՝ եղիցի յիսուն [8]երկդրամեան ար-
17 ծաթոյ։ Եւ եթէ յամէ [9]թողութեանն
սրբեսցէ զանդն իւր, ըստ գնոցն որչափ

[1] Այլօրին. Եթէ [2] Յեբր. [illegible] [3] Եբր. ածից զնոսա յերկիր [4] կամ, պատուհաս [5] Եբր. իցեն [6] Եբր. արարից [7] Եբր. տաղտկացայց

[8] Եբր. սիկղ [9] Եբր. յոբելինէ

18 ինչ իցեն, կացցէ: Ապա թէ յետ [1]թո-
ղութեանն սրբեսցէ զանդն իւր, համա-
րեսցի նմա քահանայն զարծաթն յայլ
եւս ամսն՝ մինչեւ ցտարին [2]թողութեան,
եւ հատցէ փոքր ինչ ի գնոց անտի նորա.
19 Ապա թէ փրկեսցէ զանդն որ սրբեացն
զնա, յաւելցէ զհինգերորդ մասն արծա-
թոյն ի գին իւր, եւ նորա իսկ լիցի:
20 Ապա թէ ոչ փրկեսցէ զանդն իւր, եւ
վաճառեսցէ զանդն այլում մարդոյ, մի
21 եւս փրկեսցէ. Այլ եղիցի անդն, ելեալ
ի [1]թողութեանն՝ սուրբ Տեառն, իբրեւ
զերկիր մի զատուցեալ. քահանային ե-
ղիցի ի կալուած:
22 Ապա թէ յանդոյ զոր գնեալ իցէ եւ
չիցէ յիւրոց կալուածոց՝ սրբեսցէ Տեառն,
23 Հաշուեսցի ընդ նմա քահանայն ի գնոցն
մինչեւ ցտարին [2]թողութեան, եւ տա-
ցէ զգինն յաւուր յայնմիկ սրբութիւն
24 Տեառն: Եւ յամին [1]թողութեան դարձցի
անդն անդրէն առ այն յորմէ ստացեալ
իցէ, որոյ իւր իսկ էր կալուած երկրին:
25 Եւ ամենայն գինք եղիցին ըստ սրբու-
թեան [3]կշռոցն. քսան [4]դանգ լիցի [5]երկ-
դրամեանն:
26 Եւ ամենայն անդրանիկ որ ծնանիցի
ի խաշանց քոց՝ Տեառն լիցի, եւ մի՛ ոք
սրբեսցէ զայն. եթէ արջառ իցէ, եւ
27 եթէ ոչխար՝ Տեառն լիցի: Եւ եթէ ի

[1]Եբր. յոբելենին [2]Եբր. յոբելեան [3]Եբր. սկեղն
[4]Ա. յոյնքն՝ կերատ, կամ, ցորեան [5]Եբր. սիկղն

չորքոտանեաց անսրբոց փրկիցէ ըստ
գնոց իւրոց, զհինգերորդ մասն ի նոյն
յաւելցէ, եւ նորին լիցի. ապա թէ ոչ
փրկեսցի, վաճառեսցի ըստ գնոց իւրոց:
28 Ամենայն նուէր զոր նուիրեսցէ ոք
Տեառն յամենայնէ որ ինչ իւր իցէ, ի
մարդոյ մինչեւ յանասուն եւ յանդոյ [6]մին-
չեւ ցկալուածս իւր, մի՛ դարձցի անդ-
րէն" եւ մի՛ փրկեսցի. ամենայն նուէր՝
29 սուրբ սրբութեանց լիցի Տեառն: Ամե-
նայն նուէր որ նուիրիցի ի մարդկանէ՝
մի՛ փրկեսցի, այլ մահու մեռանիցի:
30 Ամենայն տասանորդ յերկրէ, ի սեր-
մանեաց երկրին եւ ի պտղոց ծառոց,
31 Տեառն է, ի սրբութիւն Տեառն: Եւ եթէ
փրկելով ոք փրկեսցէ զտասանորդ իւր,
զհինգերորդ մասն յաւելցէ ի նոյն, [7]եւ
32 նորին լիցի": Եւ ամենայն տասանորդ
արջառոյ եւ ոչխարի, ամենայն տասա-
նորդ որ մտանիցէ ընդ թուով գաւա-
33 զանի, սրբութիւն Տեառն լիցի: Մի՛ լիցի
խտիր ընդ բարին եւ ընդ յոռին, եւ մի՛
փոխանակեսցես զբարին ընդ յոռւոյն.
ապա թէ փոխանակելով փոխանակես-
ցես, եւ նա եւ փոխանակն իւր եղի-
ցին սուրբ, եւ մի՛ փրկեսցի:
34 Այս են պատուիրանք զոր պատուիր-
եաց Տէր Մովսիսի առ որդիսն Իսրայելի
ի լերինն Սինայի:

[6]Եբր. կալուածոց իւրոց, մի վաճառեսցի
[7]Յեբր. պակասե



# ԳԼՈՒԽՔ ԹՈՒՈՑՆ

# ԹԻՒՔ

### ԳԼՈՒԽ Ա

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի
յանապատին Սինայի, ի խորանին
[1]վկայութեան, ի միում ամսեանն երկ-
րորդի, յամին երկրորդի ելանելոյ նոցա
2 յերկրէն Եգիպտացւոց, ասէ, Առէք զհա-
մար ամենայն ժողովրդեան որդւոցն Իս-
րայելի, ըստ ազգս, ըստ տանց նահա-
պետաց, ըստ թուոց յանուանէ, ըստ
3 գլխոց նոցա՝ ամենայն արու, ի քսանա-
մենից եւ ի վեր, ամենայն որ ելանիցէ
ի զօրս Իսրայելի, հանդէս առնել նոցա
հանդերձ զօրութեամբ իւրեանց դու եւ
4 Ահարոն. [2]առնիցէք նոցա հանդէս։" Եւ
ընդ ձեզ լինիցին իւրաքանչիւր ըստ
ցեղի, իւրաքանչիւր իշխան, ըստ տանց
նահապետաց լինիցին։
5 Եւ այս են անուանք արանցն որ յան-
դիման լինիցին ընդ ձեզ. Ռուբենի՝ Ե-
6 ղիսուր որդի Սեդիուրայ, Շմաւոնի՝ Սա-
7 ղամիէլ որդի Սուրիսադայի, Յուդայի՝
8 Նաասոն որդի Ամինադաբայ, Իսաքա-
9 րայ՝ Նաթանայէլ որդի Սովգարայ, Զա-
10 բուղոնի՝ Եղիաբ որդի Քեղոնայ, Որդ-
ւոցն Յովսեփայ, Եփրեմի՝ Եղիսամա
որդի Եմիուդայ, Մանասէի՝ Գամաղիէլ
11 որդի Փադասուրայ, Բենիամինի՝ Աբի-
12 դան որդի Գեդէոնի, Դանայ՝ Աքիեզեր
13 որդի Ամիսադայի, Ասերայ՝ Փագիէլ որդի
14 Եքրանայ, Գադայ՝ Եղիասափ որդի
15 Դագուելի, Նեփթաղիմայ՝ Աքիրէ որդի
16 Ենանայ։ Սոքա են անուանիք ժողովըր-
դեանն, իշխանք ցեղիցն ըստ նահապե-
տաց՝ հազարապետք Իսրայելի։
17 Եւ առին Մովսէս եւ Ահարոն զարսն
զայնոսիկ որք յանուանէն կոչեցան.
18 Եւ զամենայն ժողովուրդն ժողովեցին
ի միում ամսեանն երկրորդի, [2]յամին
երկրորդի," եւ մտին ի հանդէս ըստ ազ-
գաց իւրեանց, ըստ նահապետաց իւր-
եանց, ըստ թուոյ անուանց նոցա, ի
քսանամենից եւ ի վեր, [2]ամենայն արու"
19 ըստ գլխոց իւրեանց։ Որպէս հրամայ-
եաց Տէր Մովսիսի, եւ մտին ի հանդէս
յանապատին Սինայի։
20 Եւ եղեն որդիք Ռուբենի՝ անդրան-
կանն Իսրայելի, ըստ ազգս իւրեանց,
ըստ գունդս իւրեանց, ըստ տանց նա-
հապետաց իւրեանց, ըստ թուոյ անուանց
իւրեանց, ըստ գլխոց իւրեանց, ամե-
նայն արու ի քսանամենից եւ ի վեր,
ամենայն որ ելանէր ի զօրսն [2]Իսրայելի՝
21 Հանդէս նոցա յազգէն Ռուբենի, քա-
ռասուն եւ վեց հազար եւ հինգ հարիւր։
22 Եւ որդւոցն Շմաւոնի, ըստ ազգս իւր-
եանց, ըստ գունդս իւրեանց, ըստ տանց
նահապետաց իւրեանց, ըստ թուոյ ան-
ուանց իւրեանց, ըստ գլխոց իւրեանց,
ամենայն արու ի քսանամենից եւ ի վեր,
23 ամենայն որ ելանէր ի զօրսն՝ Հանդէս
նոցա ի ցեղէն Շմաւոնի, յիսուն եւ ինն
հազար եւ երեք հարիւր։
24 Եւ որդւոցն Գադայ՝ ըստ ազգս իւր-
եանց, ըստ գունդս իւրեանց, ըստ տանց
նահապետաց իւրեանց, ըստ թուոյ ան-
ուանց [2]նոցա, ըստ գլխոց իւրեանց,
ամենայն արու" ի քսանամենից եւ ի վեր,
25 ամենայն որ ելանէր ի զօրու՝ Հանդէս
նոցա ի ցեղէն Գադայ, քառասուն եւ
հինգ հազար եւ վեց հարիւր եւ յիսուն։
26 Եւ որդւոցն Յուդայ՝ ըստ ազգս իւր-
եանց, ըստ գունդս իւրեանց, ըստ տանց
նահապետաց իւրեանց, ըստ թուոյ ան-
ուանց [2]նոցա, ըստ գլխոց իւրեանց,
ամենայն արու" ի քսանամենից եւ ի
27 վեր, ամենայն որ ելանէր ի զօրսն՝ Հան-
դէս նոցա ի ցեղէն Յուդայ՝ եւթանասուն
եւ չորք հազարք եւ վեց հարիւր։
28 Եւ որդւոցն Իսաքարայ՝ ըստ ազգս
իւրեանց, ըստ գունդս իւրեանց, ըստ
տանց նահապետաց իւրեանց, ըստ թուոյ
անուանց [2]իւրեանց, ըստ գլխոց իւր-
եանց, ամենայն արու" ի քսանամենից
եւ ի վեր, ամենայն որ ելանէր ի զօ-
29 րու՝ Հանդէս նոցա ի ցեղէն Իսաքարայ,
յիսուն եւ չորք հազարք եւ չորեքհարիւր։

[1] Ոմնք. ժողովոյ. այսպէս յաճախ. [2] Ոմնք. պակասէ

30 Եւ որդւոցն Զաբուղոնի՝ ըստ ծննդս
իւրեանց, ըստ ազգս իւրեանց, ըստ տանց
նահապետաց իւրեանց, ըստ թուոյ ան-
ուանց [1]իւրեանց, ըստ գլխոց իւրեանց,
ամենայն արու՝՝ ի քսանամենից եւ ի վեր,
31 ամենայն որ ելանէր ի զօրու՝ Համրէն
նոցա ի ցեղէն Զաբուղոնի, յիսուն եւ
եւթն հազար եւ չորեքհարեւր։
32 Եւ որդւոցն Յովսեփայ, որդւոց Եփրե-
մի՝ ըստ ազգս իւրեանց, ըստ ծննդս
իւրեանց, ըստ տանց նահապետաց իւր-
եանց, ըստ թուոյ անուանց, [1]նոցա, ըստ
գլխոց իւրեանց, ամենայն արու՝՝ ի քսան-
ամենից եւ ի վեր, ամենայն որ ելանէր
33 ի զօրու՝ Համրէն նոցա ի ցեղէն Եփրեմի,
քառասուն հազար եւ հինգ հարեւր։
34 Եւ որդւոցն Մանասէի՝ ըստ ազգս իւր-
եանց, ըստ ծննդս իւրեանց, ըստ տանց
նահապետաց իւրեանց, ըստ թուոյ ան-
ուանց [1]իւրեանց, ըստ գլխոց իւրեանց,
ամենայն արու՝՝ ի քսանամենից եւ ի
վեր, ամենայն որ ելանէր ի զօրու՝
35 Համրէն նոցա ի ցեղէն Մանասէի, երե-
սուն եւ երկու հազար եւ երկերիւր։
36 Եւ որդւոցն Բենիամենի՝ ըստ ազգս
իւրեանց, ըստ ծննդս իւրեանց, ըստ
տանց նահապետաց իւրեանց, ըստ
թուոյ անուանց [1]նոցա, ըստ գլխոց իւր-
եանց, ամենայն արու՝՝ ի քսանամենից եւ
ի վեր, ամենայն որ ելանէր ի զօրու՝
37 Համրէն նոցա ի ցեղէն Բենիամենի, երե-
սուն եւ հինգ հազար եւ չորեքհարեւր։
38 Եւ որդւոցն Դանայ՝ ըստ ազգս իւր-
եանց, ըստ ծննդս իւրեանց, ըստ տանց
նահապետաց իւրեանց, ըստ թուոյ ան-
ուանց [1]նոցա, ըստ գլխոց իւրեանց,
ամենայն արու՝՝ ի քսանամենից եւ ի
վեր, ամենայն որ ելանէր ի զօրու՝
39 Համրէն նոցա ի ցեղէն Դանայ, վաթսուն
եւ երկու հազարք եւ եւթն հարեւր։
40 Եւ որդւոցն Ասերայ՝ ըստ ազգս իւր-
եանց, ըստ ծննդս իւրեանց, ըստ տանց
նահապետաց իւրեանց, ըստ թուոյ ան-
ուանց [1]նոցա, ըստ գլխոց իւրեանց, ա-
մենայն արու՝՝ ի քսանամենից եւ ի վեր,
41 ամենայն որ ելանէր ի զօրու՝ Համրէն
նոցա ի ցեղէն Ասերայ, քառասուն եւ
մի հազար եւ հինգ հարեւր։
42 Եւ որդւոցն Նեփթաղիմայ՝ ըստ ազգս
իւրեանց, ըստ ծննդս իւրեանց, ըստ
տանց նահապետաց իւրեանց, ըստ թուոյ
անուանց [1]նոցա, ըստ գլխոց իւրեանց,
ամենայն արու՝՝ ի քսանամենից եւ ի վեր,
43 ամենայն որ ելանէր ի զօրու՝ Համրէն
նոցա ի ցեղէն Նեփթաղեմի, յիսուն եւ
երեք հազարք եւ չորեքհարեւր։
44 Այս է համրէն զոր արարին Մովսէս
եւ Ահարոն եւ իշխանքն Իսրայելի, երկո-
տասան [2]իշխանք. այր մի ըստ [1]միում
ազգի, ըստ ցեղից՝՝ տանց նահապետաց
45 իւրեանց էին։ Եւ եղեւ ամենայն համ-
րէն որդւոց Իսրայելի [3]համրերձ զօրու՝՝
իւրեանց ի քսանամենից եւ ի վեր ամե-
նայն որ ելանէր [4]տալ պատերազմ՝՝ ի
46 միջոյ Իսրայելի. Եւ եղեն ամենայն անց-
եալքն ի համրիսն վեց հարեւր հազար, եւ
երեք հազար եւ հինգ հարեւր եւ յիսուն։
47 Բայց Ղեւտացիքն ի ցեղէ ազգին իւր-
եանց ոչ անցին ի համրիսն [5]ընդ որդիսն
48 Իսրայելի՝՝։ Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի
49 եւ ասէ, Տեսջի՛ր, զազգն Ղեւեայ մի՛
խառնեսցես ընդ նոսա ի համրէն, եւ զհա-
մար նոցա մի՛ առնուցուս ի մէջ որդւոցն
50 Իսրայելի. Եւ կացուսցես զՂեւտացիսն
ի վերայ խորանին վկայութեան, եւ ի
վերայ ամենայն կահի նորա, եւ ի վե-
րայ ամենայնի որ ինչ է ի նմա. նոքա
բարձցեն զխորանն եւ զամենայն զկահ
նորա, եւ նոքա պաշտեսցեն ի նմա, եւ
51 շուրջ զխորանաւն բանակեսցին։ Եւ ի
չուել խորանին՝ իջուսցեն զնա Ղեւտա-
ցիքն, եւ ի բանակել խորանին՝ կանգ-
նեսցեն զնա Ղեւտացիքն. եւ այլազգի
որ մերձեսցի ի նա՝ մեռցի։
52 Եւ բանակեսցին որդիքն Իսրայելի այր
ըստ իւրաքանչիւր կարգի, եւ այր ըստ
իւրաքանչիւր նահապետութեան համ-
53 գերձ զօրու իւրեանց։ Բայց Ղեւտացիքն
բանակեսցին շուրջ զխորանաւն վկայու-
թեան [1]յանդիման Տեառն՝՝, եւ ոչ լինի-
ցին մեղք ի մէջ որդւոցն Իսրայելի. եւ
պահեսցեն Ղեւտացիքն զպահպանու-
54 թիւն խորանին վկայութեան։ Եւ արա-
րին որդիքն Իսրայելի ըստ ամենայնի,
որպէս պատուիրեաց Տէր Մովսիսի [1]եւ
Ահարոնի՝՝. նոյնպէս եւ արարին։

ԳԼ. Բ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ
2 Ահարոնի եւ ասէ, Այր իւրաքանչիւր

[1]Յեբր. գօխաւէ

[2]Եբր. այր [3]Եբր. ըստ տանց նահապետաց
[4]Եբր. ի զօրու [5]Եբր. ի միջի նոցա

[1]զհետ նշանի գնդի իւրոյ գնասցեն , ըստ
տանց նահապետաց իւրեանց , ըստ բա-
նակաց իւրեանց բանակեսցին որդիքն
Իսրայէլի" ։
3 Եւ որ յառաջագոյնն բանակիցին յա-
րեւելից կողմանէ՝ ցեղ բանակին Յու-
դայ լիցէ հանդերձ զօրուն իւրեանց . եւ
իշխան որդւոցն Յուդայ՝ Նաասոն որդի
4 Ամինադաբայ ։ Եւ զօրք նորա անցեալք
ի հանդիսի՝ եւթանասուն եւ չորք հա-
5 զարք եւ վեց հարիւր ։ Եւ որք բանա-
կիցին զհետ նոցա՝ ցեղն Իսաքարայ լիցէ .
եւ իշխան որդւոցն Իսաքարայ՝ Նաթա-
6 նայէլ որդի Սովգարայ ։ Եւ զօրք նորա
անցեալք ի հանդիսի՝ յիսուն եւ չորք հա-
7 զար եւ չորեքհարիւր ։ Եւ բանակեսցին
առ նոքօք ցեղն Զաբուղոնի . եւ իշխան
որդւոցն Զաբուղոնի՝ Եղիաբ որդի Քե-
8 ղոմնի ։ Եւ զօրք նորա անցեալք ի հանդիսի՝
յիսուն եւ եւթն հազար եւ չորեքհարիւր ։
9 Ամենեքին անցեալք ի հանդիսի բանա-
կին Յուդայ , հարիւր ութսուն եւ վեց
հազար եւ չորեքհարիւր , հանդերձ զօ-
րուն իւրեանց յառաջագոյն չուեսցեն ։
10 Գունդ բանակին Ռուբենի ընդ հարա-
ւակողմն , եւ զօրն նոցա . եւ իշխան
որդւոցն Ռուբենի՝ Եղիսուր որդի Սա-
11 դիուրայ ։ Եւ զօրն նորա անցեալք ի
հանդիսի՝ քառասուն եւ վեց հազար եւ
12 հինգ հարիւր ։ Եւ բանակեսցին առ նո-
վաւ ցեղն Շմաւոնի . եւ իշխան որդւոցն
Շմաւոնի Սաղամիէլ որդի Սուրիսադայի ։
13 Եւ զօրն նորա անցեալք ի հանդիսի՝ յի-
սուն եւ ինն հազար եւ երեք հարիւր ։
14 Եւ բանակեալք առ նովաւ ցեղն Գադայ .
եւ իշխան որդւոցն Գադայ՝ Եղիասափ
15 որդի Դագուելի ։ Եւ զօր նորա անցեալք
ի հանդիսի՝ քառասուն եւ հինգ հազար
16 եւ վեց հարիւր եւ յիսուն ։ Ամենեքին
անցեալք ի հանդիսի ցեղին Ռուբենի ,
հարիւր յիսուն եւ մի հազար եւ չորեք-
հարիւր եւ յիսուն , հանդերձ զօրուն
իւրեանց երկրորդ չուեսցեն ։
17 Եւ խաղասցէ խորանն [2]վկայութեան
եւ բանակ Ղեւտացւոցն ի մէջ բանա-
կացն . որպէս բանակեսցին՝ նոյնպէս
չուեսցեն , իւրաքանչիւր [3]զհետ միմեանց
ըստ պետութեան" ։

18 Եւ գունդ բանակին Եփրեմի ընդ [4]ծո-
վակողմն հանդերձ զօրուն իւրեանց . եւ
իշխան որդւոցն Եփրեմի՝ Եղիսամա որդի
19 Եմիուդայ ։ Եւ զօրն նորա անցեալք ի
հանդիսի՝ քառասուն հազար եւ հինգ
20 հարիւր ։ Եւ որ բանակիցին զհետ նոցա՝
ցեղն Մանասէի լիցէ . եւ իշխան որդւոցն
Մանասէի՝ Գամաղիէլ որդի Փադասու-
21 րայ ։ Եւ զօրն նորա անցեալք ի հանդիսի՝
երեսուն եւ երկու հազարք եւ երկե-
22 րիւր ։ Եւ որ բանակիցին զհետ նոցա՝
գունդն Բենիամինի լիցէ . եւ իշխան որդ-
ւոցն Բենիամինի՝ Աբիդան որդի Գեդէո-
23 նի ։ Եւ զօր նորա անցեալք ի հանդիսի՝
երեսուն եւ հինգ հազար եւ չորեքհա-
24 րիւր ։ Ամենեքին անցեալք ի հանդիսի
բանակին Եփրեմի , հարիւր եւ ութ հա-
զար եւ [5]երկերիւր , հանդերձ զօրուն
իւրեանց՝ երրորդք չուեսցեն ։
25 Եւ գունդ բանակին Դանայ ընդ հիւ-
սիսի հանդերձ զօրուն իւրեանց . եւ իշ-
խան որդւոցն Դանայ՝ Աքիեզեր որդի
26 Ամիսադայի ։ Եւ զօր նորա անցեալք ի
հանդիսի՝ վաթսուն եւ երկու հազարք
27 եւ եւթն հարիւր ։ Եւ որ բանակեսցին
զհետ նորա՝ ազգն Ասերայ լիցէ . եւ իշ-
խան որդւոցն Ասերայ՝ Փագիէլ որդի
28 Եքրանայ ։ Եւ զօր նորա անցեալք ի հան-
դիսի՝ քառասուն եւ մի հազար եւ հինգ
29 հարիւր ։ Եւ որ բանակեսցին զհետ նորա՝
ցեղն Նեփթաղիմի լիցէ . եւ իշխան որդ-
ւոցն Նեփթաղիմի՝ Աքիրէ որդի Ենա-
30 նայ ։ Եւ զօրն նորա անցեալք ի հան-
դիսի՝ յիսուն եւ երեք հազարք եւ չորեք-
31 հարիւր ։ Ամենեքին անցեալք ի հանդիսի
բանակին Դանայ , հարիւր եւ յիսուն եւ
եւթն հազար եւ վեց հարիւր . հանդերձ
զօրուն իւրեանց յետոյ չուեսցեն ըստ
գունդս իւրեանց ։
32 Այս է հանդէս որդւոցն Իսրայէլի ըստ
տանց նահապետաց իւրեանց . ամենայն
հանդէս բանակացն հանդերձ զօրօք իւր-
եանց՝ վեց հարիւր հազար եւ երեք հա-
33 զարք եւ հինգ հարիւր եւ յիսուն ։ Բայց
Ղեւտացիքն ոչ անցին [6]ընդ նոսա" ի
հանդիսի , որպէս պատուիրեաց Տէր
34 Մովսիսի ։ Եւ արարին որդիքն Իսրայէլի
զամենայն՝ որպէս հրամայեաց Տէր Մով-
սիսի . այնպէս բանակէին ըստ [7]գունդս

---

[1]Եբր· առ դրօշի իւրում ի նշանս տան հարց իւ-
րոց, բանակեսցին որդիքն Իսրայէլի. դէմ յան-
դիման շուրջ զխորանաւն ժողովոյ բանակես-
ցին ։ [2]Եբր· ժողովոյ [3]Եբր· ի կայի իւրում
ըստ դրօշու իւրեանց

[4]Կամ, արեւմուտս [5]Եբր· հարիւր [6]Եբր·
ի մէջ որդւոցն Իսրայէլի [7]Եբր· դրօշուց

իւրեանց, եւ այնպէս չուէին իւրաքան-
չիւր զհետ ցեղից իւրեանց ըստ տանց
նահապետաց իւրեանց։

## ԳԼ. Գ

1 Եւ այս ազգք են Ահարոնի եւ Մով-
սիսի, յաւուր յորում խօսեցաւ Տէր ընդ
2 Մովսիսի ի լերինն Սինայի։ Եւ այս են
անուանք որդւոցն Ահարոնի. անդրանիկ՝
[1]Նաբադ եւ Աբիուդ եւ Եղիազար եւ
3 Իթամար։ Եւ այս են անուանք որդւոցն
Ահարոնի՝ քահանայիցն օծելոց, զորոց
կատարեցին զձեռս իւրեանց քահանա-
4 յանալ։ Եւ վախճանեցան Նաբադ եւ
Աբիուդ առաջի Տեառն՝ մինչ մատուցա-
նէին զհուրն օտար առաջի Տեառն յանա-
պատին Սինայի, եւ որդիք ոչ էին նոցա.
եւ քահանայացան Եղիազար եւ Իթա-
մար ընդ Ահարոնի ընդ հօրն իւրեանց։
5 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
6 ասէ, Ա՛ռ զազգն Ղեւեայ, եւ կացուս-
ցես զնոսա առաջի Ահարոնի քահանայի,
7 եւ սպասեսցեն զնա։ Եւ պահեսցեն
զպահպանութիւնս նորա եւ զպահպա-
նութիւնս որդւոցն Իսրայելի առաջի
խորանին [2]վկայութեան՝ գործել զգործ
8 խորանին։ Եւ պահեսցեն զամենայն սպաս
խորանին [2]վկայութեան եւ զպահպանու-
թիւնս որդւոցն Իսրայելի եւ զամենայն
9 գործ խորանին։ Եւ տացես զՂեւտա-
ցիսն Ահարոնի [3]եղբօր քում" եւ որդւոց
նորա [3]քահանայից. հատուցումն տուեալ
10 իցեն նոքա յորդւոցն Իսրայելի։ Եւ զԱ-
հարոն եւ զորդիս նորա կացուսցես [3]ի
վերայ խորանին վկայութեան", եւ պա-
հեսցեն զքահանայութիւնն իւրեանց [3]եւ
զամենայն ինչ զսեղանոյն, եւ որ ինչ
ի ներքոյ քան զվարագոյրն իցէ". եւ
այլազգի որ մերձենայցէ՝ մեռցի։
11 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
12 ասէ, Եւ ես ահա առի զՂեւտացիսն ի
միջոյ որդւոցն Իսրայելի փոխանակ ամե-
նայն անդրանկան որ բանայ զարգանդ ի
միջոյ որդւոցն Իսրայելի. [3]փրկանք նոցա
13 լիցին," եւ եղիցին ինձ Ղեւտացիքն։ Զի
իմ է ամենայն անդրանիկ. յաւուր յո-
րում հարի զամենայն անդրանիկ յերկ-
րին Եգիպտացւոց, սրբեցի ինձ զամենայն
անդրանիկս Իսրայելի ի մարդոյ մինչեւ
յանասուն. իմ լիցին. [3]զի ես եմ Տէր։
14 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի յա-
15 նապատին Սինայի եւ ասէ, Համարեա
արա որդւոցն Ղեւեայ ըստ տանց նա-
հապետաց իւրեանց, [3]ըստ զօրուս իւր-
եանց," ըստ ազգս իւրեանց, ամենայն
արու՝ յամսօրէից եւ ի վեր առնիցէք
16 համարս։ Եւ [4]արարին նոցա համարս Մով-
սէս [3]եւ Ահարոն" ըստ բարբառոյ Տեառն՝
17 որպէս եւ [5]հրամայեաց նոցա Տէր"։ Եւ
սոքա են որդիք Ղեւեայ ըստ անուանց
իւրեանց. Գերսոն, Կահաթ եւ Մերարի։
18 Եւ այս են անուանք որդւոցն Գերսոնի
ըստ զօրուս իւրեանց. Ղոբենի եւ Սե-
19 մէի։ Եւ որդիք Կահաթու ըստ զօրուս
իւրեանց, Ամրամ եւ Իսահառ եւ Քեբ-
20 րոն եւ Ոզիէլ։ Եւ որդիք Մերարեայ
ըստ զօրուս իւրեանց, Մոողի եւ Մու-
սի. սոքա են զօրք Ղեւտացւոց ըստ
տանց նահապետաց իւրեանց։
21 Գերսոնի՝ զօրն Ղոբենեայ եւ զօրն
22 Սեմեայ. սոքա են զօրք Գերսոնի։ Եւ
համարք նոցա ըստ թուոյ ամենայն ար-
ուի, յամսօրէից եւ ի վեր, համարք նոցա՝
23 եւթն հազար եւ հինգ հարեւր։ Եւ այս
զօրքն Գերսոնի՝ յետոյ խորանին ընդ
24 ծովակողմն բանակեսցին։ Եւ իշխան
տան նահապետաց զօրքն Գերսոնի՝ Եղի-
25 սափան որդի Դայելայ։ Եւ պահպա-
նութիւն որդւոցն Գերսոնի ի խորանին
վկայութեան՝ խորանն եւ [6]արտախու-
րակք եւ նաւարտանք խորանին վկայու-
26 թեան, Եւ առագաստք սրահին, եւ վա-
րագոյր դրան խորանին, եւ այլ եւս
աւելորդ" ամենայն գործոյն նորա։
27 Եւ Կահաթու՝ զօրն մի Ամրամայ,
եւ զօրն մի Իսահառայ, եւ զօրն մի
Քեբրոնի, եւ զօրն մի Ոզիելի. սոքա
28 են զօրքն Կահաթու. Ըստ թուոյ ամե-
նայն արուի յամսօրէից եւ ի վեր, ութ
հազար եւ վեց հարեւր, որ պահիցեն
29 զպահպանութիւն սրբութեանցն։ Եւ
զօրքն որդւոցն Կահաթու բանակեսցին
30 ի կողմանէ խորանին ընդ հարաւ։ Եւ
իշխան տան նահապետաց զօրքն Կահա-
31 թու՝ Եղիսափան որդի Ոզիելի։ Եւ պահ-
պանութիւն նոցա՝ տապանակն եւ սե-

[1] Եբր. Նադաբ, [illegible] [2] Եբր. ժո-
ղովոյ [3] Եբր. պակասէ

[4] Եբր. արար [5] Հրամայեցաւ [6] Եբր. վրանն,
նաւարտան նորա եւ վարագոյր դրան խորանին
ժողովոյ, (26) Եւ առագաստք գաւթին, եւ
վարագոյր դրան գաւթին որ զխորանաւն եւ
զսեղանովն շուրջանակի, եւ ապաւանդակք
նորա վասն

զանն եւ աշտանակն եւ զոհանոցքն եւ
կահ սրբութեանն որովք պաշտէին, եւ
[1]սրսկարանն, եւ ամենայն գործ նոցա։
32 Եւ իշխան ի վերայ իշխանացն Ղեւտաց-
ւոցն՝ Եղիազար որդի Ահարոնի քահա-
նայի կացցէ, պահել զպահպանութիւնս
սրբութեանցն։
33 Եւ Մերարեայ՝ զօրն Մոողեայ եւ
զօրն Մուսեայ. սոքա են զօրքն Մե-
34 րարեայ։ Եւ համարք նոցա ըստ թուոյ
ամենայն արուի յամսօրէից եւ ի վեր՝
35 վեց հազար եւ երկերիւր։ Եւ իշխան
տան նահապետաց զնդին Մերարեայ՝
Սուրիէլ որդի Աբիքեայ, ի կողմանէ խո-
րանին բանակեսցին ընդ հիւսիսի, [2]եւ
36 համարք նոցա։ Եւ պահպանութիւն"
որդւոցն Մերարեայ [3]խոյակք խորանին
եւ նիգք նորա եւ սիւնակք նորա, խա-
րիսխք նորա եւ ամենայն կահ նոցուն
37 եւ գործի նոցին, Եւ սիւնք [4]սրահին
շուրջանակի եւ խարիսխք նոցա եւ ցիցք
նոցա եւ ապաւանդակք նոցուն։
38 Եւ որ բանակիցին յանդիման խորա-
նին վկայութեան յարեւելից կողմանէ՝
Մովսէս եւ Ահարոն լիցին, եւ որդիք նո-
րա պահեսցեն զպահպանութիւնս սրբու-
թեանցն ի պահպանութիւնս որդւոցն
Իսրայէլի, եւ այլազգի որ մերձենայցէ՝
39 մեռցի։ Ամենայն համարք Ղեւտացւոցն
որոց արարին համարս Մովսէս եւ Ահա-
րոն բանիւ Տեառն, ըստ զօրս իւր-
եանց, ամենայն արու յամսօրէից եւ ի
վեր՝ քսան եւ երկու հազարք։
40 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
ասէ, Համարեա զամենայն անդրան-
կան արուի յորդւոցն Իսրայէլի յամսօ-
րէից եւ ի վեր, եւ կալ զթիւ նոցա
41 յանուանէ։ Եւ առցես զՂեւտացիսն ինձ,
զի ես եմ Տէր, փոխանակ ամենայն
անդրանկաց որդւոցն Իսրայէլի. եւ զա-
նասուն Ղեւտացւոց՝ փոխանակ անասնոց
42 անդրանկաց որդւոցն Իսրայէլի։ Եւ արար
Մովսէս համարս, որպէս պատուիրեաց
Տէր նմա, ամենայն անդրանկաց որդւոցն
43 Իսրայէլի։ Եւ եղեն ամենայն արուք անդ-
րանիկք [5]որդւոցն Իսրայէլի", ըստ թուոյ
յանուանէ՝ յամսօրէից եւ ի վեր, ի համ-
րիւ անտի նոցա՝ քսան եւ երկու հազարք
եւ երկերիւր եւ եւթանասուն եւ երեք։
44 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
45 ասէ, Առ զՂեւտացիսն փոխանակ ամե-
նայն անդրանկաց որդւոցն Իսրայէլի, եւ
զանասուն Ղեւտացւոց՝ փոխանակ անասու-
նոց նոցա, եւ եղիցին ինձ Ղեւտացիքն.
46 [5]զի ես եմ Տէր։ Եւ զփրկանս երկե-
րիւրոց եւ եւթանասնից եւ երեցն՝
աւելորդաց քան զՂեւտացիսն՝ յանդրան-
47 կաց որդւոցն Իսրայէլի՝ Առցես հինգ սիկղ
ըստ գլխոյ, ըստ սրբութեան [6]երկդրա-
մենին առցես. քսան [7]դանգ առ սիկղ։
48 Եւ տացես զարծաթն Ահարոնի եւ որդ-
ւոց նորա փրկանս ընդ աւելորդացն
49 ի նոցանէ։ Եւ առ Մովսէս զարծաթն՝
զփրկանս աւելորդացն ի փրկանս Ղեւ-
50 տացւոցն՝ Յանդրանկաց որդւոցն Իսրա-
յէլի. եւ առ զարծաթն հազար եւ երեք
հարիւր եւ վաթսուն եւ հինգ սիկղ ըստ
51 սրբութեան սիկղին։ Եւ ետ Մովսէս
[8]զփրկանս աւելորդացն Ահարոնի եւ որդ-
ւոց" նորա ըստ բանի Տեառն, որպէս
հրամայեաց Տէր Մովսիսի։

ԳԼ. Դ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ
2 Ահարոնի եւ ասէ, Կալ զթիւ գլխոց որդ-
ւոցն Կահաթու ի միջոյ որդւոցն Ղեւ-
եայ՝ ըստ զօրս իւրեանց, ըստ տանց
3 նահապետաց իւրեանց, [9]ի քսան եւ ի
հնգամենից" եւ ի վեր մինչեւ ցյիսնա-
մեայս, ամենայն որ մտանիցէ ի սպաս
գործել զամենայն գործ ի խորանին
4 [10]վկայութեան։ Եւ այս իցէ գործ որդ-
ւոցն Կահաթու [5]ի միջոյ որդւոցն Ղեւ-
եայ՝ ըստ զօրս իւրեանց, ըստ տանց
նահապետացն" ի խորանին վկայութեան՝
5 սրբութիւնք սրբութեանցն։ Եւ մտցէ
Ահարոն եւ որդիք իւր յորժամ խա-
ղայցէ բանակն, եւ իջուսցեն զվարա-
գոյրն հովանոց, եւ ծածկեսցեն նովաւ
6 զտապանակն վկայութեան։ Եւ դիցեն
ի վերայ նորա զնուարտանն մաշկեղէն
[11]զկապուտակ, եւ արկցեն զնովաւ ձորձ
համակ կապուտակ ի վերուստ կողմանէ,
7 եւ ագուսցեն զլծակսն։ Եւ ի վերայ զա-
ռաջաւորի սեղանոյն արկցեն հանդերձ
համակ ծիրանի, եւ զսկաւառակսն եւ զբուրվառս
եւ զճաշակս եւ զնուիրանոցսն որովք

[1]Կամ, վարագոյրն [2]Եբր. (36) Եւ համարք պահպանութեան [3]Եբր. տախտակք [4]Եբր. գաւթին [5]ՅԵբր. գոլգոլ

[6]Եբր. սկեղն [7]Եբր. կերատ [8]Եբր. զարծաթն փրկանաց ցԱհարոն եւ ցորդիս [9]Եբր. Յերեսնամենից [10]Եբր. ժողովոյ, որպէս եւ ի ներքոյ [11]Եբր. թեհաշի

նուիրեսցեն, եւ հացքն հանապազորդք
8 ի վերայ նորա կացցեն. Եւ արկցեն զնո-
վաւ հանդերձ կարմիր, եւ ծածկեսցեն
զնա մաշկեղէն նուարտամաւ [1]կապու-
տակաւ. եւ ագուսցեն ի նմա զլծակսն։
9 Եւ առցեն հանդերձ կապուտակ եւ ծած-
կեսցեն զաշտանակն լուսոյ եւ [2]զերկո-
սին ճրագարանսն՝՝ նորա եւ զունկլս
նորա եւ զքազմակալս նորա, եւ զամե-
10 նայն ամանս իւղոյ որովք պաշտիցեն. Եւ
արկցեն զնա եւ զամենայն զկահ նորա
ի նուարտամ մաշկեղէն [1]կապուտակ, եւ
11 դիցեն զնա ի վերայ լծակացն։ Եւ զսե-
ղանն ոսկի ծածկեսցեն հանդերձիւ կա-
պուտակաւ, եւ արկցեն ի վերայ նորա
նուարտամ մաշկեղէն [1]կապուտակ. եւ
12 ագուսցեն ի նմա զլծակս նորա։ Եւ առ-
ցեն զամենայն զկահ պաշտամանն՝ որովք
պաշտիցեն ի սրբութիւնս, եւ արկցեն
ի հանդերձս կապուտակս, եւ ծածկես-
ցեն [3]զայն մաշկեղէն նուարտամաւ [1]կա-
պուտակաւ, եւ դիցեն ի վերայ լծա-
13 կացն։ Եւ [4]զնուարտամն դիցեն ի վե-
րայ սեղանոյն՝՝, եւ ծածկեսցեն զնա հան-
14 դերձիւ համակ ծիրանւոյ, Եւ դիցեն ի
վերայ նորա զաման որովք պաշտիցեն
ի վերայ նորա, զբուրուառս եւ զմսա-
հանս եւ [5]զտաշտսն, եւ զծածկիչսն եւ՝՝
զամենայն սպաս սեղանոյն, եւ արկցեն
ի վերայ նորա նուարտամ մաշկեղէն [1]կա-
պուտակ. եւ անցուսցեն ընդ նա զլծակսն։
[6]Եւ առցեն հանդերձ ծիրանի եւ ծած-
կեսցեն զաւազանն եւ զխարիսխս նորա,
եւ արկցեն զնովաւ մաշկ կապուտակ,
15 եւ դիցեն ի վերայ լծակացն։՝՝ Եւ կա-
տարեսցեն Ահարոն եւ որդիք նորա ծած-
կել զսրբութիւնն, եւ զամենայն կահ
սրբութեանն ի չուել բանակին. եւ ապա
մտցեն որդիքն Կահաթու բառնալ. եւ
մի՛ մերձեսցին ի սրբութիւնսն՝ զի մի՛ մե-
ռանիցին. զայն բառնայցեն որդիքն Կա-
հաթու ի խորանէ անտի վկայութեան։
16 Եւ [7]ոստիկան Եղիազար որդի Ահարոնի
քահանայի՝ զեւղն լուսոյ եւ զխունկսն
հանդերձանաց եւ զզոհն հանապազորդ
եւ զեւղն օծութեան, եւ զհանդերձ՝՝ ամե-
նայն խորանին եւ որ ինչ ի նմա, եւ որ ի
սրբութեանն եւ [8]յամենայն սրբութիւնս՝՝։
17 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
18 ընդ Ահարոնի եւ ասէ, Մի՛ սատակիցէք
զցեղն Կահաթու ի միջոյ Ղեւտացւոցն.
19 Զայս ինչ արասջիք նոցա եւ կեցցեն
եւ մի՛ մեռանիցին ի մերձենալ նոցա ի
սրբութիւն սրբութեանցն. Ահարոն եւ
որդիք նորա մտցեն ի ներքս, եւ կար-
գեսցեն զնոսա իւրաքանչիւր ըստ կարգի
20 եւ ըստ բեռին իւրում։ Եւ մի՛ մտանի-
ցեն վայրապար տեսանել [9]զսրբութիւն
սրբութեանցն՝՝, զի մի՛ մեռանիցին։
21 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
22 ասէ, Կալ դու զհամար որդւոցն Գեր-
սոնի, ըստ տանց նահապետաց իւրեանց,
23 ըստ գնդից իւրեանց. [10]ի քսան եւ ի
հինգ ամենից՝՝ եւ ի վեր մինչեւ ցյիսնա-
մեայս, եւ արասցես նոցա համարս,
ամենայն որ մտանիցէ ի սպաս գործել
24 զգործ խորանին վկայութեան։ Այս իցէ
սպասաւորութիւն զնդին Գերսոնի՝ ի
25 մտանել ի հորկ եւ ի բառնալ. Եւ [11]բարձ-
ցէ զվերնափեղկս՝՝ խորանին եւ զխո-
րանն վկայութեան եւ զածածկոյթ նորա
նորա, եւ զնուարտամն [1]կապուտակեայ
որ ի նմա ի վերուստ կողմանէ, եւ զվա-
26 րագոյր [12]խորանին վկայութեան, Եւ
զառագաստ սրահին, եւ որ ինչ ի վե-
րայ խորանին վկայութեան՝՝, եւ զապա-
րումն եւ զամենայն զկահ սպասուն
27 որովք պաշտիցեն։ Եւ արասցեն ըստ
բերանոյ Ահարոնի եւ որդւոց նորա.
եղիցի սպասաւորութիւն որդւոցն Գեր-
սոնի ըստ ամենայն սպասաւորութեան
իւրեանց եւ ըստ ամենայն գործոց իւր-
եանց. եւ արասջիք նոցա համարս [6]յան-
ուանէ, եւ՝՝ ամենայնի որ ինչ բառնայցի
28 ի նոցանէ։ Այս իցէ սպասաւորութիւն
որդւոցն Գերսոնի ի խորանին վկայու-
թեան, եւ պահպանութիւն նոցա ի ձեռն
Իթամարայ որդւոյ Ահարոնի քահանայի։
29 Եւ որդւոցն Մերարեայ ըստ գնդից
իւրեանց, ըստ տանց նահապետաց իւր-
30 եանց արասջիք համարս. [10]ի քսան եւ
ի հինգ ամենից՝՝ եւ ի վեր մինչեւ ցյիս-

[1]Եբր. թեհաշի [2]Եբր. զճրագարանս [3]Եբր. զնոսա [4]Եբր. մաքրեսցեն զզոհանոցն [5]Եբր. զբահս եւ զկոնքս. [6]ՅԵբր. պակասէ [7]Եբր. ընդ տեսչութեամբ Եղիազարու որդւոյ Ահարոնի քահանայի եւղն լուսոյ եւ խունկքն համ դերձանաց եւ ընծայն հացի հանապազորդ եւ եւղն օծութեան, եւ տեսչութիւն

[8]Եբր. ի սպաս նորա [9]Եբր. զսրբութիւնս [10]Եբր. Յերեսնամենից [11]Եբր. բարձցեն զվարագոյրս [12]Եբր. մուտից խորանին ժողովոյ. (26) Եւ զառագաստս գաւթին եւ զվարագոյր մտից դրան գաւթին, որ զխորանաւն եւ զսեղանով շուրջանակի

նամեանս՝ արասջիք նոցա հանդէս, ամե-
նայն որ մտանիցէ ի սպաս գործոյ խո-
31 րանին վկայութեան ։ Եւ այս իցէ պահ-
պանութիւն բեռանցն որ բառնայցին ի
նոցանէ, ըստ ամենայն գործոյ նոցա ի
խորանին վկայութեան . [1]զխոյակս խո-
րանին եւ զնիգս եւ զսիւնակս նորա եւ
զխարիսխս նորա, [2]եւ զվարագոյրն եւ
զխարիսխս նոցա եւ զսիւնս նոցա . եւ
32 զվարագոյր դրան խորանին, Եւ զսիւնս
սրահին" շուրջանակի եւ զխարիսխս
նոցա, եւ [3]զսիւնս վարագուրին դրան
սրահին, եւ զխարիսխս նոցա եւ" զցիցս
նոցա եւ զապաւանդակս նոցա, եւ զա-
մենայն զկահ նոցա եւ զամենայն սպաս
նոցա . եւ յանուանէ հանդէս առնիցէք
[3]նոցա, եւ" ամենայն կահի պահպանու-
33 թեանն որ բառնայցի ի նոցանէ . Այս իցէ
սպասաւորութիւն գնդի որդւոցն Մե-
րարեայ, յամենայն ի գործս իւրեանց ի
խորանին վկայութեան՝ ի ձեռն Իթա-
մարայ որդւոյ Ահարոնի քահանայի ։
34 Եւ արարին հանդէս Մովսէս եւ Ահա-
րոն եւ իշխանքն Իսրայելի որդւոցն Կա-
հաթու ըստ գնդից իւրեանց եւ ըստ
35 տանց նահապետաց իւրեանց՝ [4]ի քսան
եւ ի հինգամենից" եւ ի վեր մինչեւ
ցյիսնամեանս, ամենայն որ մտանէր ի
սպաս եւ գործէր գործ ի խորանին վկա-
36 յութեան . Եւ եղեւ նոցա հանդէս ըստ
գնդից իւրեանց՝ երկու հազար եւ եւթն
37 հարեւր եւ յիսուն ։ Այս է հանդէս գնդին
Կահաթու ամենայն որ մտանէր ի սպաս
ի խորանին վկայութեան, որպէս եւ ա-
րարին հանդէս Մովսէս եւ Ահարոն բա-
նիւ Տեառն ի ձեռն Մովսիսի ։
38 Եւ անցին ի հանդիսի որդիքն Գեր-
սոնի ըստ գնդից իւրեանց, ըստ տանց
39 նահապետաց իւրեանց՝ [4]ի քսան եւ ի
հինգամենից" եւ ի վեր մինչեւ ցյիսնամ-
եանս, ամենայն որ մտանէր պաշտել եւ
40 գործել գործ ի խորանին վկայութեան. Եւ
եղեւ հանդէս նոցա ըստ գնդից իւրեանց,
ըստ տանց նահապետաց իւրեանց՝ երկու
41 հազար եւ վեց հարեւր եւ երեսուն ։ Այս է
հանդէս գնդի որդւոցն Գերսոնի, ամենայն
որ պաշտէր ի խորանին վկայութեան,
որոց արարին հանդէս Մովսէս եւ Ահա-
րոն ըստ բանի Տեառն[3]ի ձեռն Մովսիսի" ։
42 Անցին ի հանդիսի եւ գունդք որդւոցն
Մերարեայ ըստ գնդից իւրեանց, ըստ
43 տանց նահապետաց իւրեանց՝ [4]ի քսան
եւ ի հինգամենից" եւ ի վեր մինչեւ ցյիս-
նամեանս, ամենայն որ մտանէր պաշ-
44 տել ի գործ խորանին վկայութեան. Եւ
եղեւ հանդէս նոցա ըստ գնդից իւր-
եանց, ըստ տանց նահապետաց իւրեանց՝
45 երեք հազար եւ երկերիւր ։ Այս է հան-
դէս գնդի որդւոյն Մերարեայ, որոց ա-
րարին հանդէս Մովսէս եւ Ահարոն ըստ
բանի Տեառն ի ձեռն Մովսիսի ։
46 Ամենեքին անցեալք ի հանդիսի, ո-
րոց արարին հանդէս Մովսէս եւ Ահա-
րոն եւ իշխանքն Իսրայելի Ղեւտացւոցն՝
ըստ գնդից իւրեանց, ըստ տանց նա-
47 հապետաց իւրեանց՝ [4]ի քսան եւ ի հինգ-
ամենից" եւ ի վեր մինչեւ ցյիսնամեանս,
ամենայն որ մտանէր ի գործ [5]սպասու-
թեանցն եւ ի գործ կրելեաց խորանին
48 վկայութեան, Եղեն անցեալք ի հանդի-
սի ութ հազար եւ հինգ հարեւր եւ
49 [6]ութսուն ըստ բանի Տեառն ։ Արար նո-
ցա հանդէս Տէր" ի ձեռն Մովսիսի, այր
ըստ առնէ ի վերայ գործոյ իւրեանց, ի
վերայ բեռանցն զոր ինքեանք բառնա-
յին . եւ անցին ի հանդիսի՝ որպէս հրա-
մայեաց Տէր Մովսիսի ։

## Գլ. Ե

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Հրաման տուր որդւոցն Իսրայելի, եւ
արձակեսցեն ի բաց զամենայն բորոտ ի
բանակէ անտի, եւ զամենայն սերմնա-
3 կաթ եւ զամենայն պղծեալ յոգի . Յա-
րուէ մինչեւ ցէգ արձակեցէք ի բաց
ի բանակէ անտի, եւ մի՛ պղծեսցեն զբա-
4 նակս իւրեանց յոր եսդ [7]իջանեմ ։ Եւ ա-
րարին այնպէս որդիքն Իսրայելի, եւ
արձակեցին զնոսա ի բաց ի բանակէ ան-
տի . որպէս խօսեցաւ Տէր ընդ Մովսի-
սի, այնպէս արարին որդիքն Իսրայելի ։
5 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
6 Խօսեաց ընդ որդիսդ Իսրայելի եւ ա-
սասցես, Այր կամ կին, որ ոք արաս-
ցէ յամենայն մարդկեղէն մեղաց, եւ
արհամարհելով [8]արհամարհիցէ եւ յան-
7 ցանիցէ անձնն այն, Խոստովան լիցի
զմեղս իւր զոր արար, եւ հատուսցէ
ընդ յանցանացն զգլուխն, եւ զհինգե-

[1] Եբր. զտախտակս [2] Եբր. Եւ զսիւնս զաւթին
[3] Յեբր. պակաս [4] Եբր. Յերեսնամենից

[5] Եբր. սպասու [6] Եբր. ութսուն (49) Ըստ բանի Տեառն արարաւ նոցա հանդէս [7] Եբր. բնակեմ ի միջի նոցա [8] Եբր. արհամարհիցէ զՏէր

բորդ եւս մասն նորա յաւելցէ ի նոյն,
8 եւ տացէ այնմ որում յանցեաւն։ Ապա
թէ չիցէ ոք առնն մերձաւորիչ հատու-
ցանել նմա զյանցանաց նորա, եւ ընդ
յանցանացն որ ինչ ընծայիցի Տեառն՝
այն քահանային եղիցի, բաց ի խոյէ
քաւութեանն որով քաւիցէ վասն իւր։
9 Եւ ամենայն պտուղ ըստ ամենայնի
որ որբիցի յորդւոցն Իսրայելի զոր ինչ
մատուցանիցեն Տեառն, քահանային ե-
10 ղիցի։ Եւ [1]յիւրաքանչիւր սրբոց ան-
տի՝ նորա լինիցին. եւ այր ոք որ տացէ
քահանային՝ նորա լինիցի։
11 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
12 Խօսեաց ընդ որդիսդ Իսրայելի եւ ա-
սասցես ցդոսա, Առն ուրուք առն, ե-
թէ յանցանիցէ կին իւր եւ արհամար-
13 հիցէ զնա, Եւ ննջեսցէ ոք ընդ նմա
արութեամբ սերման, եւ վրիպիցի յա-
չաց առն իւրոյ եւ թաքուցանիցէ, եւ
նա պղծեալ իցէ, եւ վկայ ոչ գուցէ
14 զնմանէ, եւ [2]յղի ոչ իցէ՝, Եւ հասա-
նիցէ ի վերայ առն նորա ոգի նախան-
ձու, եւ նախանձ բերիցէ ընդ կնոջ իւ-
րում, եւ նա իցէ պղծեալ. կամ հա-
սանիցէ ի վերայ նորա ոգի նախանձու,
եւ նախանձ բերիցէ ընդ կնոջ իւրում,
15 եւ նա ոչ իցէ պղծեալ, Ածցէ այրն զկին
իւր առ քահանայն, եւ մատուսցէ վասն
նորա պատարագ՝ զտասանորդ գրուի ա-
լեր գարեղէն, եւ եւղ մի՛ արկցէ ի նա,
եւ կնդրուկ մի՛ դիցէ ի վերայ նորա. զի
զոհ նախանձաւորութեան է, զոհ յի-
16 շատակի, զոհ յիշատակելոյ զմեղս։ Մա-
տուսցէ քահանայն եւ կացուսցէ զկինն
17 առաջի Տեառն։ Եւ առցէ քահանայն
ջուր սուրբ կենդանի խեցեղէն ամանաւ,
եւ ի հողոյ անտի որ իցէ առ յատակաւ
խորանին վկայութեան՝ առեալ քահա-
18 նայն արկցէ ի ջուրն։ Եւ կացուսցէ քա-
հանայն զկինն առաջի Տեառն, եւ մեր-
կացուսցէ զգլուխ կնոջն, եւ տացէ ի
ձեռս նորա զզոհ յիշատակին, զզոհ նա-
խանձաւորութեանն. եւ ի ձեռին քա-
հանային կայցէ ջուրն յանդիմանութեան
19 նզովիցն այնորիկ. Եւ երդմնեցուսցէ զնա
քահանայն եւ ասասցէ ցկինն, Եթէ չիցէ
ննջեցեալ ընդ քեզ առն, եթէ չիցես
յանցուցեալ եւ պղծեալ առ արամբ քով,
քաւեալ լիջիր ի ջրոյդ [3]յանդիմանու-
20 թեան նզովիցդ այդորիկ. Ապա թէ յան-
ցուցեալ իցես առ արամբ քով, կամ
պղծեալ իցես, եւ տուեալ իցէ ուրուք
զարութիւն իւր ի քեզ՝ առանց առն քո,
21 Եւ երդմնեցուսցէ քահանայն զկինն երդ-
մամբ նզովիցս այսորիկ, եւ ասասցէ քա-
հանայն ցկինն, Տացէ զքեզ Տէր ի
նզովս եւ յերդումն ի մէջ ժողովրդեան
քո, ի տալ Տեառն զբարձս քո ի քակ-
տումն, եւ զորովայն քո յուռուցումն.
22 Եւ մտցէ ջուրս նզովեալ յորովայն քո,
ուռուցանել զմէջ քո եւ քակել զբարձս
քո. եւ ասասցէ կինն, Եղիցի, եղիցի։
23 Եւ գրեսցէ քահանայն զնզովս զայսոսիկ
ի մատեանս, եւ լուասցէ ի ջուրն յանդի-
24 մանութեան նզովիցն։ Եւ տացէ ըմպել
կնոջն զջուրն յանդիմանութեան նզովից,
եւ մտցէ ի նա ջուրն յանդիմանութեան
25 նզովեալ։ Եւ առցէ քահանայն ի ձեռանէ
կնոջն զզոհ նախանձաւորութեանն, եւ
[4]դիցէ զզոհն առաջի Տեառն, եւ մա-
26 տուսցէ առ սեղանն։ Եւ առցէ բուռն
քահանայն ի զոհէ յիշատակին նորա եւ
[5]հանցէ զայն ի սեղանն՝, եւ ապա ար-
բուսցէ կնոջն զջուրն յանդիմանութեան։
27 Եւ եղիցի եթէ պղծեալ իցէ, եւ ծած-
կելով ծածկեալ իցէ յառնէն նորա, եւ
մտանիցէ ի նա ջուրն յանդիմանութեան
նզովեալ, ուռուսցէ զորովայն նորա եւ
քակեսցին բարձք նորա, եւ եղիցի կինն
28 ի նզովս ի մէջ ժողովրդեան իւրոյ։ Ապա
թէ չիցէ պղծեալ կինն եւ սուրբ իցէ,
29 քաւեալ լիցի եւ ընկալցի սերմն։ Այս
օրէն իցէ նախանձաւորութեան, որոյ
յանցուցեալ իցէ կին՝ որ առնակին իցէ
30 եւ պղծիցի, Կամ այր յորոյ վերայ հա-
սանիցէ ոգի նախանձու, եւ ի նախանձ
մտանիցէ ընդ կնոջ իւրում, կացուսցէ
զկինն առաջի Տեառն, եւ արասցէ նմա
քահանայն ըստ ամենայն օրինաց այսո-
31 րիկ. Եւ քաւեալ լիցի այրն ի մեղաց
անտի, եւ կինն ընկալցի զմեղս իւր։

## Գլ. Զ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Խօսեաց ընդ որդիսդ Իսրայելի եւ ա-
սասցես, Այր կամ կին, որ մեծ ինչ
ուխտս ուխտեսցէ սրբել [6]զսրբութիւն

[1] Եբր. զօր իւրաքանչիւր ոք սրբիցէ՝ [2] Եբր. չիցէ ըմբռնեալ
[3] Եբր. դառնութեան, այսպէս էին և է օրինակ-
[4] Եբր. երերեսցէ [5] Եբր. այրեսցէ ի վերայ սեղանոյն [6] Եբր. զանձն

3 Տեառն , ի գինւոյ եւ ի ցքւոյ սրբեսցի. եւ
զքացախ գինւոյ եւ զքացախ ցքւոյ մի՛
արբցէ , եւ [1]զխաղող նոր եւ զչամիչ մի՛
4 կերիցէ ։ Զամենայն աւուրս ուխտին ի-
րոյ՝ յամենայնէ զինչ եւ լինիցի [2]յորթոյ,
զգինի՝՝ ի չամչոյ մինչեւ ցթեփն մի՛ կե-
5 րիցէ ։ Զամենայն աւուրս սրբութեանն,
սրբիչ մի՛ ածիցէ զգլխով իւրով , մինչեւ
լցցին աւուրքն զորս ուխտեաց Տեառն՝
սուրբ կացցէ , աճեցուցեալ զվարս մա-
6 զոյ գլխոյ իւրոյ ։ Զամենայն աւուրս
ուխտին իւրոյ Տեառն , յոգի վախճան-
7 եալ մի՛ մտցէ . ի հօր եւ ի մօր , յեղբօր
եւ ի քեռ , մի՛ պղծեսցի նոքօք ի մահու
նոցա , զի ուխտ [3]Տեառն ի վերայ գլխոյ
8 նորա է ։ Զամենայն աւուրս ուխտին իւրոյ
9 սուրբ կացցէ Տեառն ։ Եւ եթէ յանկարծ
մեռանիցի ոք ի վերայ նորա , առժամայն
պղծեսցի գլուխ ուխտի նորա . եւ գերծցէ
զգլուխ իւր յաւուր յորում սրբիցի , եւ
10 յաւուրն եւթներորդի գերծցի. Եւ յաւուրն
ութերորդի ածցէ երկուս տատրակս կամ
երկուս ձագս աղաւնեաց առ քահանայն
11 ի դուռն խորանին վկայութեան ։ Եւ ա-
րասցէ քահանայն զմին վասն մեղաց ,
եւ զմին յողջակէզ . եւ քաւեսցէ վասն
նորա քահանայն ընդ մեղացն զոր մե-
ղաւ յոգի, եւ սրբեսցէ զգլուխ իւր յաւուր
12 յայնմիկ. [4]Զի յայնմ աւուր սրբեաց՝՝
Տեառն զաւուրս ուխտին իւրոյ , եւ ածցէ
զառն մի տարեւոր վասն յանցանացն . եւ
աւուրքն առաջինք անհամարք լինիցին ,
զի պղծեցաւ [5]գլուխ ուխտի՝՝ նորա ։
13 Եւ այս օրէն իցէ ուխտաւորին յա-
ւուր յորում կատարիցէ զաւուրս ուխ-
տին իւրոյ , ածցի ի դուռն խորանին
14 վկայութեան . Եւ մատուսցէ զպատա-
րագն իւր Տեառն , զառն մի տարեւոր
անարատ յողջակէզ, եւ որոջ մի տարե-
ւոր անարատ վասն մեղաց , եւ խոյ մի
15 անարատ [6]ի փրկութիւն , Եւ խան մի
բաղարջաց նաշհոյ , եւ պանս զանգեալ
իւղով , եւ քաքարս բաղարջս օծեալս
իւղով , եւ զզոհս նոցա եւ զնուէրս իւր-
16 եանց ։ Եւ մատուսցէ քահանայն առաջի
Տեառն , եւ արասցէ զվասն մեղացն
17 նորա եւ զողջակէզն նորա ։ Եւ զխոյն
արասցէ զոհ [7]փրկութեան Տեառն ի վե-
րայ խանին բաղարջոյ, եւ արասցէ քա-
հանայն զզոհն նորա եւ զնուէրս նորա։
18 Եւ գերծցէ ուխտաւորն առ դրան խո-
րանին վկայութեան զգլուխ ուխտին
իւրոյ , եւ դիցէ զմազն ի հուրն որ [8]ի
19 վերայ զոհին [7]փրկութեան ։ Եւ առցէ
քահանայն զերրին եփեալ ի խոյէ անտի ,
եւ պան մի բաղարջ ի խանէն եւ քա-
քար մի բաղարջ , եւ դիցէ քահանայն
ի վերայ ձեռաց ուխտաւորին , յետ գեր-
20 ծելոյ նորա զգլուխն իւր . Եւ [9]մատուսցէ
զայն քահանայն ընծայ՝՝ առաջի Տեառն,
եւ եղիցի սուրբ , քահանային եղիցի ի
վերայ լերծոյն [10]նուիրի եւ ի վերայ
երւոյն [11]հասի . եւ ապա արբցէ ուխտա-
21 ւորն գինի ։ Այս օրէն իցէ ուխտաւորի
որ ուխտիցէ ոք Տեառն զպատարագ իւր
վասն ուխտից , թող զայն որ ինչ գտա-
նիցէ ձեռն իւր . ըստ կարի ուխտին
իւրոյ զոր ուխտիցէ ըստ օրինի [12]սրբու-
թեան Տեառն՝՝։
22 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
23 ասէ , Խօսեաց ընդ Ահարոնի եւ ընդ
որդիս նորա եւ ասասջիր , Այսպէս օրհ-
նեսջիք զորդիսդ Իսրայելի , եւ ասասջիք
24 նոցա , Օրհնեսցէ զքեզ Տէր եւ պահես-
25 ցէ զքեզ . Երեւեցուսցէ Տէր զերեսս իւր
26 ի քեզ , եւ ողորմեսցի քեզ . Ամբարձցէ
Տէր զերեսս իւր ի քեզ , եւ տացէ քեզ
27 խաղաղութիւն ։ Եւ դիցեն զանուն իմ
ի վերայ որդւոցն Իսրայելի , եւ ես օրհ-
նեցից զնոսա ։

## ԳԼ. Է

1 Եւ եղեւ յաւուր յորում կատարեաց
Մովսէս առ ի կանգնելոյ զխորանն , եւ
օծ զնա[13] եւ զամենայն սպասս նորա, եւ
զզոհանոցն եւ զամենայն սպաս նորա ,
2 եւ օծ զնոսա եւ սրբեաց զնոսա , Եւ
մատուցին իշխանքն Իսրայելի [14]երկո-
տասան իշխանք տանց նահապետաց նո-
ցա . նոքա էին իշխանք ցեղիցն , եւ
նոքա կային ի վերայ [15]ստիկանութեանն։
3 Եւ մատուցին զընծայս իւրեանց առաջի
Տեառն , վեց սայլս զարգարեալս եւ ե-
զինս երկոտասանս , սայլ մի յերկուց իշ-
խանաց եւ զուարակ յիւրաքանչիւր ու-

[1] Եբր. զամենայն հոյզ խաղողոյ մի՛ արբցէ , և
[2] Եբր. յորթոյ գինւոյ, [3] Եբր. Աստուծոյ իւրոյ
[4] Եբր. Եւ սրբեսցէ [5] Եբր. ուխտ [6] Եբր. ի խա-
ղաղական [7] Եբր. խաղաղութեան
[8] Եբր. ի ներքոյ [9] Եբր. երերեսցէ զնոսա քահա-
նայն երերումն [10] Եբր. երերման [11] Եբր.
վերացման [12] Եբր. նուիրման, կամ, զատուց-
ման իւրոյ [13] Եբր. յաւելու , և սրբեաց զնա
[14] Եբր. գլխաւք [15] Եբր. Հանդիսին

4 մեքէ . եւ ածին առաջի խորանին ։ Խօ-
5 սեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ , Առ
զայդ ի դոցանէ , եւ եղիցին ի գործ սպա-
սաւորութեան խորանին վկայութեան .
եւ տացես զայդ ցՂեւտացիսն՝ իւրա-
քանչիւր ըստ իւրում սպասաւորութեան ։
6 Եւ առեալ Մովսիսի զսայլսն եւ զեզինսն՝
7 ետ ցՂեւտացիսն ։ Զսայլս երկուս եւ ե-
զինս չորս ետ ցորդիսն Գեթսոնի ըստ
8 սպասաւորութեան իւրեանց . Եւ սայլս
չորս եւ եզինս ութ ետ ցորդիսն Մե-
րարեայ ըստ սպասաւորութեան իւրեանց,
ի ձեռն Իթամարայ որդւոյ Ահարոնի քա-
9 հանայի ։ Եւ ցորդիսն Կահաթու ոչինչ
ետ . զի զսպասաւորութիւն սրբութեան
սրբութեանցն ունէին , եւ յուսս իւր-
եանց բառնային ։
10 Եւ մատուցին իշխանքն ի նաւակա-
տիս սեղանոյն , յաւուր յորում օծ զնա,
եւ բերին իշխանքն զընծայս իւրեանց
11 առաջի սեղանոյն ։ Եւ ասէ Տէր ցՄովսէս ,
Մի մի իշխան մի մի օր մատուսցեն զըն-
ծայս իւրեանց ի նաւակատիս սեղանոյն ։
12 Եւ մատուցանէր զընծայս իւր յաւուրն
առաջնում Նաասոն որդի Ամինադաբայ ,
13 իշխան ցեղին Յուդայ ։ Մատոյց զըն-
ծայսն իւր . կնիք մի արծաթի ի հարեւր
եւ յերեսուն կշռոյ , տաշտ մի ար-
ծաթի՝ յեւթանասուն սիկղ ըստ սրբու-
թեան սիկղն , երկոքին լի նաշհով զան-
14 գեալ ընդ իւղոյ ի զոհ , Տուփ մի ոսկի
15 ի տասն [1]դահեկանէ լի խնկով, Զուարակ
մի յանդւոյ , խոյ մի , գառն մի տարեւոր
16 յողջակէզ , Եւ նոխազ մի յայծեաց վասն
17 մեղաց , Եւ ի զոհ [2]փրկութեան՝ երինջս
երկուս , խոյս հինգ ,նոխազս հինգ, որոջս
տարեւորս հինգ . այս ընծայ Նաասոնի
որդւոյ Ամինադաբայ ։
18 Եւ յաւուրն երկրորդի մատոյց Նա-
թանայէլ որդի Սովգարայ , իշխան ցեղին
19 Իսաքարայ ։ Եւ մատոյց զընծայս իւր .
կնիք մի արծաթի ի հարեւր եւ յերեսուն
կշռոյ , տաշտ մի արծաթի՝ յեւթանա-
սուն սիկղ ըստ սրբութեան սիկղն ,
երկոքեան լի նաշհով զանգեալ ընդ իւ-
20 ղոյ ի զոհ , Տուփ [3]մի ի տասն դահե-
21 կանէ՟ լի խնկով , Զուարակ մի յանդւոյ,
խոյ մի , գառն մի տարեւոր յողջակէզ ,
22 Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց ,
23 Եւ ի զոհ [2]փրկութեան՝ երինջս երկուս,

[1] Եբր. սիկղէ [2] Եբր. խաղաղութեան [3] Եբր. մի ոսկի ի տասն սիկղէ

խոյս հինգ , նոխազս հինգ , որոջս տա-
րեւորս հինգ . այս ընծայ Նաթանայելի
որդւոյ Սովգարայ ։
24 Եւ յաւուրն երրորդի՝ իշխան որդւոցն
Զաբուղոնի , Եղիաբ որդի Քեղոմէի ,
25 Զընծայսն իւր . կնիք մի արծաթի ի
հարեւր եւ յերեսուն կշռոյ , տաշտ
մի արծաթի յեւթանասուն սիկղէ ըստ
սրբութեան սիկղն , երկոքին լի նաշհով
26 զանգեալ ընդ իւղոյ ի զոհ , Տուփ [3]մի
27 ի տասն դահեկանէ՟ լի խնկով, Զուա-
րակ մի յանդւոյ , խոյ մի , գառն մի տա-
28 րեւոր յողջակէզ , Եւ նոխազ մի յայծ-
29 եաց վասն մեղաց , Եւ ի զոհ [2]փրկու-
թեան՝ երինջս երկուս , խոյս հինգ , նո-
խազս հինգ , որոջս տարեւորս հինգ .
այս ընծայ Եղիաբու որդւոյ Քեղոմէի ։
30 Եւ յաւուրն չորրորդի՝ իշխան որդւոցն
Ռուբենի , Եղիսուր որդի Սեդիուրայ ,
31 Զընծայս իւր . կնիք մի արծաթի ի հա-
րեւր եւ յերեսուն կշռոյ , տաշտ մի
արծաթի յեւթանասուն սիկղէ ըստ սրբու-
թեան սիկղն , երկոքին լի նաշհով զան-
32 գեալ ընդ իւղոյ ի զոհ , Տուփ [3]մի ի
33 տասն դահեկանէ՟ լի խնկով , Զուարակ
մի յանդւոյ , խոյ մի , գառն մի տարե-
34 ւոր յողջակէզ , Եւ նոխազ մի յայծեաց
35 վասն մեղաց , Եւ ի զոհ [2]փրկութեան՝
երինջս երկուս , խոյս հինգ , նոխազս
հինգ , որոջս տարեւորս հինգ . այս ընծայ
Եղիսուրայ որդւոյ Սեդիուրայ ։
36 Եւ յաւուրն հինգերորդի՝ իշխան որդ-
ւոցն Շմաւոնի , Սաղամիէլ որդի Սուրի-
37 սադայի , Զընծայս իւր . կնիք մի արծա-
թի ի հարեւր եւ յերեսուն կշռոյ, տաշտ
մի արծաթի յեւթանասուն սիկղէ ըստ
սրբութեան սիկղն , երկոքին լի նաշհով
38 զանգեալ ընդ իւղոյ ի զոհ , Տուփ [3]մի ի
39 տասն դահեկանէ՟ լի խնկով, Զուարակ
մի յանդւոյ , խոյ մի , գառն մի տարե-
40 ւոր յողջակէզ , Եւ նոխազ մի յայծեաց
41 վասն մեղաց , Եւ ի զոհ [2]փրկութեան՝
երինջս երկուս , խոյս հինգ , նոխազս
հինգ , որոջս տարեւորս հինգ . այս ընծայ
Սաղամիելի որդւոյ Սուրիսադայի ։
42 Եւ յաւուրն վեցերորդի՝ իշխան որդ-
ւոցն Գադայ , Եղիսափան որդի Դագու-
43 ելի , Զընծայս իւր . կնիք մի արծաթի
ի հարեւր եւ յերեսուն կշռոյ , տաշտ
մի արծաթի յեւթանասուն սիկղէ ըստ
սրբութեան սիկղն . երկոքին լի նաշհով
44 զանգելով ընդ իւղոյ ի զոհ , Տուփ [3]մի

45 ի տասն դահեկանէ՝՝ լի խնկով, Զուա-
րակ մի յանդէոյ, խոյ մի, գառն մի տա-
46 րեւոր յողջակէզ, Եւ նոխազ մի յայծ-
47 եաց վասն մեղաց, Եւ ի զոհ [1]փրկու-
թեան՝ երինջս երկուս, խոյս հինգ, նո-
խազս հինգ, որոջս տարեւորս հինգ. այս
ընծայ Եղիասափայ որդւոյ Դագուելի։
48 Եւ յաւուրն եւթներորդի՝ իշխան որդ-
ւոցն Եփրեմի, Եղիսամա որդի Եմիու-
49 դայ, Զընծայսն իւր. կոնք մի արծաթի
ի հարիւր եւ յերեսուն կշռորդէ, տաշտ
մի արծաթի յեւթանասուն սիկղէ ըստ
սրբութեան սիկղն, երկոքին լի նաշհով
50 զանգելով ընդ իւղոյ ի զոհ, Տուփ [2]մի
51 ի տասն դահեկանէ՝՝ լի խնկով, Զուարակ
մի յանդէոյ, խոյ մի, գառն մի տարե-
52 ւոր յողջակէզ, Եւ նոխազ մի յայծեաց
53 վասն մեղաց, Եւ ի զոհ [1]փրկութեան՝ ե-
րինջս երկուս, խոյս հինգ, նոխազս հինգ,
որոջս տարեւորս հինգ. այս ընծայ Ե-
ղիսամայ որդւոյ Եմիուդայ։
54 Եւ յաւուրն ութերորդի՝ իշխան որդ-
ւոցն Մանասէի, Գամաղիէլ որդի Փա-
55 դասուրայ, Զընծայսն իւր. կոնք մի ար-
ծաթի ի հարիւր եւ յերեսուն կշռորդէ,
տաշտ մի արծաթի յեւթանասուն սիկղէ
ըստ սրբութեան սիկղն. երկոքին լի
56 նաշհով զանգելով ընդ իւղոյ ի զոհ, Տուփ
57 [2]մի ի տասն դահեկանէ՝՝ լի խնկով, Զու-
արակ մի յանդէոյ, խոյ մի, գառն մի
58 տարեւոր յողջակէզ, Եւ նոխազ մի յայծ-
59 եաց վասն մեղաց, Եւ ի զոհ [1]փրկու-
թեան՝ երինջս երկուս, խոյս հինգ, նո-
խազս հինգ, որոջս տարեւորս հինգ. այս
ընծայ Գամաղիէլի որդւոյ Փադասուրայ։
60 Եւ յաւուրն իններորդի՝ իշխան որդ-
ւոցն Բենիամինի Աբիդան որդի Գեդէո-
61 նի, Զընծայս իւր. կոնք մի արծաթի
ի հարիւր եւ յերեսուն կշռորդէ, տաշտ
մի արծաթի յեւթանասուն սիկղէ ըստ
սրբութեան սիկղն. երկոքին լի նաշհով
62 զանգելով ընդ իւղոյ ի զոհ, Տուփ [2]մի ի
63 տասն դահեկանէ՝՝ լի խնկով, Զուարակ
մի յանդէոյ, խոյ մի, գառն մի տարեւոր
64 յողջակէզ, Եւ նոխազ մի յայծեաց վասն
65 մեղաց, Եւ ի զոհ [1]փրկութեան՝ երինջս
երկուս, խոյս հինգ, նոխազս հինգ,
որոջս տարեւորս հինգ. այս ընծայ Ա-
բիդանայ որդւոյ Գեդէոնի։
66 Եւ յաւուրն տասներորդի՝ իշխան որդ-
ւոցն Դանայ Աքիեզեր որդի Ամիսա-
67 դայի, Զընծայսն իւր. կոնք մի արծաթի
ի հարիւր եւ յերեսուն կշռորդէ, տաշտ
մի արծաթի յեւթանասուն սիկղէ ըստ
սրբութեան սիկղն. երկոքին լի նաշհով
68 զանգելով ընդ իւղոյ ի զոհ, Տուփ [2]մի
69 ի տասն դահեկանէ՝՝ լի խնկով, Զուարակ
մի յանդէոյ, խոյ մի, գառն մի տարե-
70 ւոր յողջակէզ, Եւ նոխազ մի յայծեաց
71 վասն մեղաց, Եւ ի զոհ [1]փրկութեան՝
երինջս երկուս, խոյս հինգ, նոխազս
հինգ, որոջս տարեւորս հինգ. այս ընծայ
Աքիեզերայ որդւոյ Ամիսադայի։
72 Եւ յաւուրն մետասաներորդի՝ իշխան
որդւոցն Ասերայ, Փագիէլ որդի Եքրա-
73 նայ, Զընծայսն իւր. կոնք մի արծաթի
ի հարիւր եւ յերեսուն կշռորդէ, տաշտ
մի արծաթի յեւթանասուն սիկղէ ըստ
սրբութեան սիկղն, երկոքին լի նաշհով
74 զանգելով ընդ իւղոյ ի զոհ, Տուփ [2]մի
75 ի տասն դահեկանէ՝՝ լի խնկով, Զուարակ
մի յանդէոյ, խոյ մի, գառն մի տարե-
76 ւոր յողջակէզ, Եւ նոխազ մի յայծեաց
77 վասն մեղաց, Եւ ի զոհ [1]փրկութեան՝
երինջս երկուս, խոյս հինգ, նոխազս
հինգ, որոջս տարեւորս հինգ. այս ընծայ
Փագիէլի որդւոյ Եքրանայ։
78 Եւ յաւուրն երկոտասաներորդի՝ իշխան
որդւոցն Նեփթաղիմայ, Աքիրէ որդի
79 Ենանայ, Զընծայսն իւր. կոնք մի ար-
ծաթի ի հարիւր եւ յերեսուն կշռորդէ,
տաշտ մի արծաթի յեւթանասուն սիկղէ
ըստ սրբութեան սիկղն, երկոքին լի
80 նաշհով զանգելով ընդ իւղոյ ի զոհ, Տուփ
81 [2]մի ի տասն դահեկանէ՝՝ լի խնկով, Զուա-
րակ մի յանդէոյ, խոյ մի, գառն մի տա-
82 րեւոր յողջակէզ, Եւ նոխազ մի յայծեաց
83 վասն մեղաց, Եւ ի զոհ [1]փրկութեան՝
երինջս երկուս, խոյս հինգ, նոխազս
հինգ, որոջս տարեւորս հինգ. այս ընծայ
Աքիրէի որդւոյ Ենանայ։
84 Այս է օրէն նաւակատեաց սեղանոյն
յաւուրն յորում օծ զնա. յիշխանաց որդ-
ւոցն Իսրայէլի, կոնք արծաթիք երկոտա-
սան, տաշտք արծաթիք երկոտասան,
85 [3]տուփք երկոտասան, Ի հարիւր եւ յե-
րեսուն սիկղէ կոնք [4]մի, յեւթանասուն
սիկղէ տաշտ մի. ամենայն արծաթ սպա-
սուցն՝ երկու հազար եւ չորեքհարիւր
86 սիկղ ըստ սրբութեան սիկղն. Տուփք

---

[1]Եբր. խաղաղութեան [2]Եբր. մի ոսկի ի տասն սիկղէ [3]Եբր. տուփք ոսկիք [4]Եբր. մի արծաթի

ոսկիք երկոտասանք լի խնկով, [1]ամե-
նայն ոսկի տփոցն՝ հարեւր եւ քսան
87 [2]դահեկան. Եւ ամենայն արջառ յողջա-
կէզ, զուարակք երկոտասանք, խոյք
երկոտասանք, գառինք տարեւորք [2]ա-
նարատք երկոտասան, եւ զոհք նոցա
եւ նուէրք նոցին. եւ նոխազք յայծեաց
88 վասն մեղաց երկոտասանք. Եւ ամե-
նայն արջառք ի զոհ [3]ողջակիզին [2]երկո-
տասանք, երինջք քսան եւ չորք, խոյք
վաթսուն, նոխազք վաթսուն, որոջք
տարեւորք [2]անարատք վաթսուն. այս
են նուակատիք սեղանոյն յետ [4]կատա-
րելոյ զձեռս նոցա"։
89 Ի մտանելն Մովսէսի ի խորանն վկա-
յութեան խօսել ընդ նմա, եւ լուաւ
զբարբառ [5]Տեառն ի խօսելն" ընդ նմա ի
վերուստ ի քաւութենէ անտի՝ [6]ի միջոյ
երկուցն քերովբէից որ էին" ի վերայ
տապանակին վկայութեան, ի միջոյ եր-
կուց քերովբէիցն, եւ խօսէր ընդ նմա։

ԳԼ. Ը

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ,
2 Խօսեաց ընդ Ահարոնի եւ ասասցես ցնա,
Յորժամ դնիցես զճրագունսն, ի [2]միջէ
կողմանէ երեսաց աշտանակին լուցա-
3 նիցեն եւթանեքին ճրագարանքն։ Եւ ա-
րար այնպէս Ահարոն. [2]ի միջէ կողմանէ"
հանդէպ աշտանակին եդոյց զճրագարանս
նորա, որպէս հրամայեաց Տէր Մովսէսի։
4 Եւ այս էր կազմած աշտանակին. [7]ձոյլ
ոսկի, բուն նորա, եւ շուշանք նորա
ձոյլ համակ", ըստ օրինակին որպէս եցոյց
Տէր Մովսէսի՝ այնպէս արար զաշտանակն։
5 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ասէ,
6 Առ դու զՂեւտացիսն ի միջոյ որդւոցն
7 Իսրայելի եւ սրբեսցես զնոսա. Եւ այս-
պէս արասցես նոցա զսրբութիւնն իւր-
եանց. ցանեսցես զնոքօք ջուր սրբու-
թեան, եւ ածցի ածելի ի վերայ ամե-
նայն մարմնոյ նոցա, եւ լուասցեն զձորձս
8 իւրեանց, եւ սուրբք եղիցին։ Եւ առ-
ցեն զուարակ մի յանդւոյ, եւ ըստ նմին
զոհ, նաշիհ զանգեալ իւղով, եւ առցես
[8]որթ տարեւոր" յանդւոյ վասն մեղաց։
9 Եւ մատուսցես զՂեւտացիսն առաջի խո-
րանին վկայութեան. եւ ժողովեսցես
զամենայն ժողովուրդ որդւոցն Իսրայելի։
10 Եւ մատուսցես զՂեւտացիսն առաջի
Տեառն, եւ դիցեն որդիքն Իսրայելի զձեռս
11 իւրեանց ի վերայ Ղեւտացւոցն։ Եւ զա-
տուսցէ Ահարոն զՂեւտացիսն ի հատու-
ցումն առաջի Տեառն յորդւոցն Իսրա-
յելի, եւ եղիցին գործել զգործ խորա-
12 նին առաջի Տեառն։ Եւ Ղեւտացիքն
դիցեն զձեռս իւրեանց ի վերայ գլխոյ
զուարակացն. եւ արասցես զմին վասն
մեղաց, եւ զմին յողջակէզ Տեառն քա-
13 ւել վասն նոցա։ Եւ կացուսցես զՂեւ-
տացիսն [2]առաջի Տեառն եւ" առաջի Ա-
հարոնի եւ առաջի որդւոց նորա, եւ տա-
ցես զնոսա հատուցումն առաջի Տեառն։
14 Եւ զատուսցես զՂեւտացիսն ի միջոյ
15 որդւոցն Իսրայելի, եւ եղիցին ինձ։ Եւ
ապա մտցեն Ղեւտացիքն գործել զգործ
խորանին վկայութեան. եւ սրբեսցես
զնոսա, եւ տացես զնոսա հատուցումն
16 [2]առաջի Տեառն". Զի հատուցումն հա-
տուցեալ են նոքա ինձ ի միջոյ որդւոցն
Իսրայելի. փոխանակ ամենայն անդրանե-
կաց որ բանան զամենայն արգանդ յորդ-
17 ւոցն Իսրայելի՝ առի զնոսա ինձ։ Զի իմ է
ամենայն անդրանիկ որդւոցն Իսրայելի,
ի մարդոյ մինչեւ յանասուն. յաւուր յո-
րում հարի զամենայն անդրանիկ յերկ-
րին Եգիպտացւոց, սրբեցի զնոսա ինձ։
18 Եւ առի զՂեւտացիսն փոխանակ ամե-
19 նայն անդրանկաց որդւոցն Իսրայելի։ Եւ
ետու զՂեւտացիսն հատուցումն տուեալս
Ահարոնի եւ որդւոց նորա ի միջոյ որ-
դւոցն Իսրայելի, գործել զգործ որդւոցն
Իսրայելի ի խորանին վկայութեան, եւ
քաւել վասն որդւոցն Իսրայելի [9]մերձե-
նալով ի սրբութիւնսն։
20 Եւ արարին Մովսէս եւ Ահարոն եւ
ամենայն ժողովուրդ որդւոցն Իսրայելի
Ղեւտացւոցն. որպէս պատուիրեաց Տէր
Մովսէսի վասն Ղեւտացւոցն՝ նոյնպէս ա-
21 րարին նոցա որդիքն Իսրայելի. Եւ սրբե-
ցան Ղեւտացիքն, եւ լուացին [10]զհան-
դերձս, եւ ետուն զանձինս Ահարոնի ի
հատուցումն" առաջի Տեառն. եւ քաւ-
եաց վասն նոցա Ահարոն սրբել զնոսա։
22 Եւ ապա մտին Ղեւտացիքն սպասել
զպաշտօն իւրեանց ի խորանին վկայու-

[1]Եբր. մի մի տուփ ի տասն սիկեղէ ըստ սրբու-
թեան սիկղին. ամենայն [2]Յեբր. պ—կաս [3]Եբր. խա-
ղաղութեան [4]Եբր. օծանելոյ զնա [5]Եբր. որոյ
խօսէրն [6]Եբր. որ [7]Եբր. ճախարակեալ, կամ
կռածոյ յոսկւոյ, ի բնոյ նորա մինչեւ ի շուշանսն
կռածոյ [8]Եբր. մեւս եւս զուարակ

[9]Եբր. զի մի՛ դիպեսցի հարուած յորդիսն Իսրա-
յելի՝ ի մերձենալ որդւոցն Իսրայելի [10]Եբր. զհան-
դերձս իւրեանց, եւ մատոյց Ահարոն զնոսա նուէր

թեան՝ առաջի Ահարոնի եւ առաջի որդ-
ւոց նորա. որպէս պատուիրեաց Տէր
Մովսիսի վասն Ղեւտացւոցն, նոյնպէս
եւ արարին նոցա։
23 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
24 ասէ, Այս ինչ է որ վասն Ղեւտացւոցն
իցէ. ի քսան եւ հինգամենից եւ ի վեր
մտցեն գործել ի խորանին վկայութեան.
25 Եւ ի յիսնամենից՝ ի բաց կացցեն ի պաշ-
տամանէ անտի, եւ ոչ եւս գործեսցեն։
26 Եւ [1]պաշտեսցէ եղբայր նորա" ի խորա-
նին վկայութեան, [2]պահել պահեսցէ
զպահպանութիւնս, բայց գործ ինչ մի՛
գործեսցէ". այնպէս արասցես Ղեւտաց-
ւոցն ի պահպանութիւնս իւրեանց։

## ԳԼ. Թ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի յանապա-
տին Սինայի, յամին երկրորդի ելանելոյ
նոցա յԵգիպտոսէ յամսեանն առաջնում,
2 եւ ասէ, [3]Ասա եւ" արասցեն որդիքն
Իսրայէլի զզատիկն ի ժամանակի իւրում
3 ի չորեքտասաներորդում աւուր ամսոյն
առաջնոյ [4]արասցեն զայն ընդ երեկս,
ըստ ժամանակս, ըստ [5]օրինի իւրում,
4 ըստ [6]պայմանի իւրում [4]առնիցեն զնա։ Եւ
խօսեցաւ Մովսէս ընդ որդիսն Իսրայէլի
5 առնել զզատիկն։ [7]Ի սկսանել չորեքտա-
սաներորդի աւուր ամսոյն" յանապատին
Սինայի. որպէս հրամայեաց Տէր Մով-
սիսի, այնպէս արարին որդիքն Իսրայէլի։
6 Եւ եղեն արք որ ոչ էին սուրբ ող-
ւով մարդոյ, եւ ոչ կարէին առնել
զզատիկն յաւուր յայնմիկ. եւ մատեան
առաջի Մովսիսի եւ Ահարոնի յաւուր
7 յայնմիկ, Եւ ասեն ցնոսա արքն այնո-
քիկ, Մեք անսուրբք եմք յոգի մարդոյ.
[8]արդ մի՛" յետնեսցուք ի մատուցանելոյ
պատարագ Տեառն ի ժամանակի իւրում
8 ի մէջ որդւոցն Իսրայէլի։ Ասէ ցնոսա
Մովսէս, Կացէք այդր, եւ լուայց թէ
զինչ տացէ հրաման Տէր վասն ձեր։
9 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
10 ասէ, Խօսեաց ընդ որդիսն Իսրայէլի եւ
ասասցես, Մարդ ոք՝ մարդ որ լինիցի
անսուրբ յոգի մարդոյ, եւ կամ թէ ի
հեռի ճանապարհի ոք իցէ ի ձէնջ յազգս
11 ձեր, արասցէ զզատիկն Տեառն. Յամ-
սեանն երկրորդի, ի չորեքտասաներոր-
դում աւուր ընդ երեկս արասցէ զնա,
բաղարջով եւ եղեգով կերիցեն զնա,
12 Եւ մի՛ թողուցուն ինչ ի նմանէ յայգ,
եւ ոսկր մի՛ բեկանիցեն ի նմանէ. ըստ
13 [5]օրինի զատկին արասցեն զնա։ Եւ մարդ
ոք որ սուրբ իցէ, եւ ի հեռաւոր ճա-
նապարհի ոչ իցէ, եւ հեղգասցի առնել
զզատիկն, սատակեսցի անձն այն ի ժո-
ղովրդենէ իւրմէ, զի զպատարագն Տեառն
ոչ մատոյց ի ժամանակի իւրում. զմեղս
14 իւր ընկալցի մարդն այն։ Եւ եթէ
յարեսցի ի ձեզ եկ ոք յերկրին ձերում,
եւ առնիցէ զզատիկն Տեառն, ըստ օրի-
նակի զատկին եւ ըստ պայմանի իւրում
արասցէ զնա. օրէն՝ մի եւ նոյն կացցէ
ձեզ, եկին եւ բնակի երկրին։
15 Եւ յաւուրն յորում կանգնեցաւ խո-
րանն՝ ծածկեաց ամպ զխորանն [9]եւ
զտունն" վկայութեան. եւ ընդ երեկս լի-
նէր ի խորանին իբրեւ զտեսիլ հրոյ մին-
16 չեւ ցառաւօտ։ Այնպէս լինէր հանա-
պազ. ամպ ծածկէր զնա ի տուէ, եւ
17 տեսիլ հրոյ ի գիշերի։ Եւ յորժամ վե-
րանայր ամպն ի խորանէ անտի, ապա
չուէին որդիքն Իսրայէլի. եւ ի տեղւոջ
յորում զտեղի առնոյր ամպն՝ անդ բա-
18 նակէին որդիքն Իսրայէլի։ Հրամանաւ
Տեառն չուէին որդիքն Իսրայէլի, եւ
հրամանաւ Տեառն բանակէին. զամենայն
աւուրս յորս հովանի [10]ունիցի ամպն ի
վերայ խորանին, [11]բանակեսցին որդիքն
19 Իսրայէլի"։ Եւ յորժամ [12]ձգիցի ամպն ի
վերայ խորանին աւուրս բազումս, [13]պա-
հեսցեն որդիքն Իսրայէլի զպահպանու-
20 թիւն Տեառն, եւ [14]մի՛ չուեսցեն։ Եւ
եղիցի" յորժամ հովանի [10]ունիցի ամպն
զաւուրս թուով ի վերայ խորանին,
ըստ բանի Տեառն [11]բանակեսցին, եւ
21 ըստ բանի Տեառն [15]չուեսցեն։ Եւ եղիցի
յորժամ լինիցի" ամպն յերեկորեայ մին-
չեւ ցառաւօտ, [16]եթէ վերանայցէ" ամպն
ընդ առաւօտն, [17]չուեսցեն. զցերեկ կամ
զցայգ. եւ եթէ ոչ վերասցի ամպն, ոչ

[1]Եբր. պաշտեսցեն զեղբարս իւրեանց [2]Եբր. պա-
հել զպահպանութիւնս, բայց գործ ինչ մի՛
գործեսցեն [3]Եբր. ղ–ֆ–ռէ [4]Եբր. առնիցէք
[5]Եբր. ամենայն օրինի [6]Եբր. ամենայն պայմանի
[7]Եբր. Եւ արարին զզատիկն յամսեանն առաջ-
նում ի չորեքտասաներորդում աւուր ամսոյն
ընդ երեկս [8]Եբր. ընդէ՞ր

[9]Եբր. վրանաւն [10]Եբր. ունէր [11]Եբր. բանակէին
[12]Եբր. ձգէր [13]Եբր. պահէին [14]Եբր. ոչ չուէին։
(20) Եւ էր [15]Եբր. չուէին։ (21) Եւ էր յորժամ
լինէր [16]Եբր. եւ վերանայր [17]Եբր. և չուէին
զցերեկ կամ զցայգ յորժամ վերանայր ամպն,
չուէին։

22 չուեսցեն ։" Եւ եթէ [1]ամսօրեայ ժամա-
նակ յաճախիցէ ամպն եւ հովանի լինիցի
ի վերայ նորա, բանակեսցին որդիքն
23 Իսրայելի՝ եւ մի՛ չուեսցեն"։ Ըստ հրա-
մանի [2]Տեառն չուեսցեն", եւ զպահպա-
նութիւնս Տեառն [3]պահեսցեն հրամա-
նաւ Տեառն ի ձեռն Մովսիսի ։

Գլ. Ժ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Արա դու քեզ երկուս փողս արծաթիս.
կռածոյս արասցես զնոսա, եւ եղիցին
քեզ ազդ առնելոյ ժողովրդեանն, եւ
3 չուելոյ բանակացն ։ Եւ հարկանիցեն փող
նոքօք, եւ [4]ժողովեսցի ամենայն ժողո-
վուրդն ի դուռն խորանին վկայութեան ։
4 Եւ եթէ ի միումն հարկանիցեն փող,
եկեսցեն առ քեզ իշխանքն, զօրավարքն
5 Իսրայելի ։ Եւ հարջիք փող ազդեցու-
թեան, եւ չուեսցեն բանակքն բանակ-
6 եալք ընդ արեւելս ։ Եւ հարկանիցէք
զերկրորդ փողն ազդեցութեան, եւ չուես-
ցեն բանակքն բանակեալք ընդ հարաւ ։
[5]Եւ հարկանիցէք զերրորդ փողն ազդե-
ցութեան, եւ չուեսցեն բանակքն բա-
նակեալք ընդ ծովակողմն ։ Եւ հարկա-
նիցէք զչորրորդ փողն ազդեցութեան,
եւ չուեսցեն բանակքն բանակեալք ընդ
հիւսիսի ." ազդեցութեան փող հարկա-
7 նիցեն ի չուելն իւրեանց ։ Եւ յորժամ
ժողովիցէք զժողովուրդն՝ հարկանիցէք
8 փող, եւ ոչ ազդեցութեան ։ Եւ որդիքն
Ահարոնի քահանայք հարցեն փող, եւ
եղիցի ձեզ օրէն յաւիտենական յազգս
9 ձեր ։ Եւ եթէ ելանիցէք ի պատերազմ
յերկրի ձերում ընդդիմակայացն որ կայ-
ցեն ձեզ հակառակ, ազդեսջիք փողով
եւ յիշատակեսջիք առաջի Տեառն[6], եւ
10 ապրիցէք ի թշնամեացն ձերոց ։ Եւ յա-
ւուրս ուրախութեան ձերոյ [7]եւ յամ-
սագլուխս ձեր հարկանիցէք փող եւ ի
վերայ ողջակիզացն եւ ի վերայ զոհիցն
[8]փրկութեանց ձերոց. եւ եղիցի ձեզ
յիշատակ առաջի Աստուծոյ ձերոյ. ես
եմ Տէր՝ Աստուած ձեր ։

11 Եւ եղեւ յամին երկրորդի յամսեանն
երկրորդում որ օր քսան էր ամսոյն, վե-
րացաւ ամպն ի խորանէն վկայութեան ։
12 Եւ չուեցին որդիքն Իսրայելի [9]հանդերձ
աղխիւքն" իւրեանց յանապատէն Սի-
նայի. եւ եկաց ամպն յանապատին Փա-
13 րանու ։ Եւ չուեցին [10]որդիքն Իսրայելի"
14 ըստ բանի Տեառն ի ձեռն Մովսիսի ։ Եւ
չուեցին նախ գունդք բանակի որդւոցն
Յուդայ յառաջագոյն զօրուն իւրեանց.
եւ ի վերայ զօրացն նոցա Նաասոն որդի
15 Ամինադաբայ ։ Եւ ի վերայ զօրաց որդ-
ւոցն Իսաքարայ՝ Նաթանայէլ որդի Սով-
16 գարայ ։ Եւ ի վերայ զօրու ցեղի որդւոցն
17 Զաբուղոնի՝ Եղիաբ որդի Քեղոմայ ։ Եւ
իջուցանէին զխորանն, եւ չուէին. որ-
դիքն Գերսոնի եւ որդիքն Մերարեայ
18 բառնային զխորանն ։ Եւ չուէին գունդք
բանակի որդւոցն Ռուբենի հանդերձ զօ-
րուն իւրեանց. եւ ի վերայ զօրու նոցա
19 Եղիսուր որդի Սեդիուրայ ։ Եւ ի վերայ
զօրու ցեղի որդւոցն Շմաւոնի՝ Սաղա-
20 միէլ որդի Սուրիսադայի ։ Եւ ի վերայ
զօրու ցեղի որդւոցն Գադայ՝ Եղիսափան
21 որդի Դագուելի ։ Եւ [11]չուեսցեն որդիքն
Կահաթու բարձեալ զսրբութիւնսն. եւ
[12]կանգնեսցեն զխորանն մինչեւ [13]այլքն
22 հասանիցեն"։ Եւ չուեցին գունդք բա-
նակին Եփրեմայ հանդերձ զօրուն իւր-
եանց. եւ ի վերայ զօրու նոցա Եղիսա-
23 մա որդի Եմիուդայ ։ Եւ ի վերայ զօրու
ցեղի որդւոցն Մանասէի՝ Գամաղիէլ որդի
24 Փադասուրայ ։ Եւ ի վերայ զօրու ցեղին
որդւոցն Բենիամինի՝ Աբիդան որդի Գե-
25 դէոնի ։ Եւ չուեցին գունդք բանակի որդ-
ւոցն Դանայ յետոյ քան զամենայն բա-
նակսն հանդերձ զօրուն իւրեանց. եւ
ի վերայ զօրու նոցա՝ Աքիեզեր որդի Ա-
26 միսադայի ։ Եւ ի վերայ զօրու ցեղի որդ-
ւոցն Ասերայ՝ Փագիէլ որդի Եքրանայ ։
27 Եւ ի վերայ զօրու ցեղի որդւոցն Նեփ-
28 թաղիմայ՝ Աքիրէ որդի Ենանայ ։ Այս
են [14]զօրք որդւոցն Իսրայելի. եւ չուե-
ցին հանդերձ զօրուն իւրեանց ։
29 Եւ ասէ Մովսէս ցՅոբաբ որդի Հռա-
գուելի Մադիանացի, ցաներն Մովսիսի,
Ահա մեք չուեմք ի տեղին զոր ասաց Տէր
տալ զնա մեզ. եկ ընդ մեզ, եւ բարի
արասցուք քեզ. զի Տէր խօսեցաւ

[1]Եբր. աւուրս երկուս, կամ ամիս մի, կամ տա-
րի մի յերկարէր ամպն մնալ ի վերայ խորա-
նին, բանակէին որդիքն Իսրայելի, և ոչ չուէին,
եւ յորժամ վերանայր, չուէին ։ [2]Եբր. Տեառն
բանակէին, եւ ըստ հրամանի Տեառն չուէին
[3]Եբր. պահէին [4]Եբր. ժողովեսցի առ քեզ [5]Յեբր.
[illegible] [6]Եբր. [illegible], Աստուծոյ ձերոյ
[7]Եբր. եւ ի տօնս ձեր և [8]Եբր. խաղաղականաց

[9]Եբր. ըստ չուոցն [10]Եբր. զառաջինն [11]Եբր.
չուեցին [12]Եբր. կանգնեցին [13]Եբր. ի հա-
սանել նոցա [14]Եբր. զօրք

30 բարութիւնս Իսրայելի։ Եւ նա ասէ,
Ոչ երթայց անդր, այլ յերկիրն իմ եւ
31 յազգն իմ գնացից։ Եւ ասէ ցնա, Մի՛
թողուր զմեզ. քանզի [1]էիր ընդ մեզ
յանապատին. եւ եղիցես ընդ մեզ ծեր"։
32 Եւ եղիցի թէ երթայցես ընդ մեզ, եւ
լինիցին բարութիւնքն զոր ինչ արասցէ
մեզ Տէր, բարի արասցուք եւ քեզ։
33 Եւ չուեցին ի լեռնէ անտի Տեառն
երեքօրեայ ճանապարհ. եւ տապանակ
ուխտին Տեառն յառաջագոյն քան զնոսա
երթայր երեքօրեայ ճանապարհաւ, գի-
34 տել նոցա հանգիստ։ Եւ [2]ամպն հովանի
ունէր ի վերայ նոցա ի տուէ ի չուել
նոցա ի բանակէ անտի։
35 Եւ եղեւ ի չուել տապանակին՝ ասէ
Մովսէս, Արի, Տէր, եւ ցրուեսցին թշնա-
միք քո, փախիցեն [3]ամենայն ատելիք քո"։
36 Եւ ի դադարելն ասէ, Դարձիր, Տէր, ի
հազարաւորս եւ ի բիւրաւորս Իսրայելի։

ԳԼ. ԺԱ

1 Եւ ժողովուրդն տրտնջէր չարաչար ա-
ռաջի Տեառն. եւ լուաւ Տէր եւ բար-
կացաւ սրտմտութեամբ, եւ բորբոքեցաւ
ի նոսա հուր ի Տեառնէ, եւ եկեր զմասն
2 ինչ բանակին։ Եւ աղաղակեաց ժողո-
վուրդն առ Մովսէս, եւ յաղօթս եկաց
Մովսէս առ Տէր, եւ դադարեաց հուրն։
3 Եւ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ
Հրայրեաց. զի բորբոքեցաւ ի նոսա հուրն
4 ի Տեառնէ։ Եւ խառնաղանճն որ էր ի
մէջ նոցա ցանկացան ցանկութիւն, եւ
նստեալ լային որդիքն Իսրայելի եւ ա-
5 սէին, Ո՞ տացէ մեզ միս ուտելոյ. Զի
յիշեցաք զձուկնն զոր ուտէաք յԵգիպ-
տոս ձրի, եւ զսեխն եւ զմեղրապտուղ եւ
6 զպրասն եւ զսոխն եւ զխստոր. Եւ արդ
աւասիկ ՝նքօղեալ են անձինք մեր, եւ
ոչ ուրեք բայց միայն ի մանանայն են
7 աչք մեր։ Եւ մանանայն էր իբրեւ զսերմն
գնձոյ [4]սպիտակ, եւ տեսիլ նորա իբրեւ
8 զտեսիլ սառին։ Եւ շրջէր ժողովուրդն
եւ քաղէին, եւ աղային յերկանս եւ լե-
սուին յանգանի, եւ եփէին ի պտուկս
եւ առնէին նկանս. եւ էր քաղցրութիւն
նորա իբրեւ զխորիսխ իւղոյ [4]եւ մեղու"։
9 Եւ յորժամ իջանէր ցօղ ի բանակն զգիշեր,
իջանէր եւ մանանայն ի վերայ նորա։

10 Լուաւ Մովսէս զլալիւն նոցա ըստ
գնդից իւրեանց, զիւրաքանչիւրն առ դրան
վրանի իւրոյ. եւ բարկացաւ սրտմտու-
թեամբ Տէր յոյժ, եւ առաջի Մովսիսի
11 չար թուեցաւ։ Եւ ասէ Մովսէս ցՏէր,
Ընդէ՞ր [4]Տէր, չարչարեցեր զծառայ քո,
եւ հի՞մ ոչ գտի շնորհս առաջի քո,
արկանել զինեւ [5]զբարկութիւն ժողո-
12 վրրդեանս այսորիկ։ Միթէ ե՞ս յղացայ
զամենայն ժողովուրդս զայս, կամ թէ ե՞ս
ծնայ զսոսա, զի ասես ցիս թէ՝ Առ զդա
ի գոգ քո, որպէս առնուցու դայեակ
զստնդիաց, տանել յերկիրն զոր երդուար
13 հարցն նոցա։ Եւ արդ ուստի՞ է ինձ միս՝
տալ ամենայն ժողովրդեանս այսմիկ, զի
լան զինեւ եւ ասեն, Տուր մեզ միս զի
14 կերիցուք։ Ոչ կարեմ ես միայն կրել զժո-
ղովուրդս զայս, զի ծանրագոյն քան զիս
15 է բանդ։ Եթէ այդպէս առնիցես ընդ իս,
սպան իսկ զիս, եթէ հաճոյ իցէ քեզ,
եթէ գտի շնորհս եւ ողորմութիւն առ
ի քէն, զի մի՛ տեսից զչարչարանս իմ։
16 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ժողովեա ինձ
եւթանասուն այր ի ծերոցն Իսրայելի,
զոր դու գիտես եթէ նոքա իցեն ծերա-
գոյնք ժողովրդեանն, եւ ընտիրք նոցա.
եւ հանցես զնոսա ի խորանն վկայու-
17 թեան, եւ կացցեն անդ ընդ քեզ. Եւ
իջից անդր եւ խօսեցայց ընդ քեզ. եւ
առից ի Հոգւոյդ որ ի քեզ է եւ արկից զնո-
քօք. եւ բարձցեն ընդ քեզ [6]զյանդգնու-
թիւն ժողովրդեանդ այդորիկ, եւ ոչ
18 կրեսցես զնոսա դու միայն։ Եւ ցժողո-
վուրդն ասասցես, Սրբեցարուք առ վա-
ղիւ, եւ կերիջիք միս. զի լացէք առաջի
Տեառն եւ ասացէք, Ո՞ ջամբեսցէ մեզ
միս. զի լաւ էր մեզ յԵգիպտոս. եւ տացէ
ձեզ Տէր միս [4]ուտելոյ, եւ կերիջիք միս։
19 Ոչ զմի օր ուտիցէք, եւ ոչ զերկուս,
եւ ոչ զհինգ օր, եւ ոչ զտասն, եւ ոչ
20 զքսան օր. Այլ զամսօրեայ աւուրս ու-
տիցէք, մինչեւ ելանիցէ ընդ ռնգունս
ձեր, եւ եղիցի ձեզ ի զաղնութիւն. զի
հեստեցէք Տեառն որ է ի միջի ձերում,
եւ լացէք առաջի նորա, եւ ասէիք՝ Ըն-
դէ՞ր էր մեզ ելանել յԵգիպտոսէ։
21 Եւ ասէ Մովսէս, Վեցհարեւր հազար
հետեւակաց է ժողովուրդն յորոց միջի
եմ ես, եւ դու ասես՝ Միս տաց նոցա եւ
22 կերիցեն ամսօրեայ ժամանակ. Միթէ
արջառ եւ ոչխա՞ր սպանանիցի եւ բա-

[1] Եբր· գիտես ուր ագցուք յանապատին, եւ ե-
ղիցես մեզ փոխանակ աչաց [2] Եբր· ամպն Տեառն
[3] Եբր· ատելիք քո յերեսաց քոց [4] Յեբր· դալաե

[5] Եբր· զքեռն

ւական լինիցի նոցա, կամ թէ ամենայն
ձկունք ծովու ժողովիցի եւ բաւական
23 լինիցի նոցա։ Եւ ասէ Տէր ցՄովսէս,
Միթէ ձեռն Տեառն չիցէ՞ բաւական.
այժմ գիտասցես եթէ հասանիցէ ի վերայ
24 քո բանս իմ, եթէ ոչ։ Եւ ել Մովսէս
եւ խօսեցաւ ընդ ժողովրդեանն զպատ-
գամս Տեառն. եւ ժողովեաց եւթանա-
սուն այր ի ծերոց ժողովրդեանն, եւ կա-
25 ցոյց զնոսա շուրջ զխորանաւն։ Եւ էջ
Տէր ամպով, եւ խօսեցաւ ընդ Մովսիսի,
եւ առ ի Հոգւոյն որ ի նմա, եւ արկ
զեւթանասուն արամբքն ծերովք. եւ
իբրեւ հանգեաւ Հոգին ի վերայ նոցա,
եւ մարգարէացան ի բանակին, եւ այլ
26 ոչ եւս յաւելին։ Եւ մնացին երկու արք
ի բանակին, անուն միումն Եղդադ, եւ
անուն երկրորդին Մովդադ, եւ հանգեաւ
ի վերայ նոցա Հոգին. եւ նոքա էին ի
գրելոց անտի եւ ոչ եկին ի խորանն. եւ
27 մարգարէացան ի բանակին։ Եւ ընթա-
ցեալ պատանի մի պատմեաց Մովսիսի եւ
ասէ ցնա, Եղդադն եւ Մովդադն մար-
28 գարէանան ի բանակին։ Պատասխանի
տուեալ Յեսուայ որդւոյ Նաւեայ, սպա-
սաւորին Մովսիսի ընտրելոյ, եւ ասէ,
29 Տէր Մովսէս, արգել զնոսա։ Եւ ասէ ցնա
Մովսէս, Մի՛ արկաներ դու ինձ նախան-
ձուկս. եւ ո՛ տայր զամենայն ժողովուրդս
Տեառն մարգարէս, յորժամ տայր Տէր
30 զՀոգին իւր ի վերայ նոցա։ Եւ գնաց Մով-
սէս ի բանակն, ինքն եւ ծերքն Իսրայելի։
31 Եւ ել հողմ ի Տեառնէ եւ խաղացոյց
յայս կոյս զլորամարգին ի ծովէն, եւ ան-
կաւ զբանակաւն աւուր գնաց աստի եւ
աւուր գնաց անտի շուրջ զբանակաւն,
32 իբրեւ ցերկուս կանգունս յերկրէ։ Եւ
յարուցեալ ժողովուրդն զտիւն ողջոյն եւ
զգիշերն ողջոյն, եւ զտիւն ողջոյն ի վաղիւ
անդր, ժողովեցին զլորամարգին. որ սա-
կաւ ժողովեաց՝ տասն քոռ. եւ սպանին եւ
ալխտեցին իւրեանց ապուխտս ապուխտս
33 շուրջ զբանակաւն։ Մինչդեռ միսն յա-
տամունս նոցա էր՝ յառաջ քան զսպառ-
ելն, եւ Տէր բարկացաւ ժողովրդեանն,
եւ եհար Տէր զժողովուրդն հարուածս
34 մեծամեծս յոյժ։ Եւ կոչեցաւ անուն տեղ-
ւոյն այնորիկ Գերեզմանք ցանկութեան.
զի անդ թաղեցին զժողովուրդն ցան-
35 կացող։ Եւ ի Գերեզմանացն ցանկու-
թեան չուեաց ժողովուրդն յԱսերովթ[1]։

## Գլ. ԺԲ

1 Եւ բամբասեցին Մարիամ եւ Ահարոն
զՄովսէս վասն կնոջն Եթէովպացւոյ զոր
առ Մովսէս. զի կին Եթէովպացի առ.
2 եւ ասեն, Միթէ ընդ Մովսիսի՞ միայն
խօսեցաւ Տէր. ո՞չ ապաքէն եւ ընդ մեզ
3 խօսեցաւ. եւ լուաւ Տէր։ Եւ այրն Մով-
սէս հեզ էր յոյժ քան զամենայն մար-
4 դիկ որ էին ի վերայ երկրի։ Եւ ասէ Տէր
նոյնժամայն ցՄովսէս եւ ցԱհարոն եւ
ցՄարիամ, Ելէք դուք երեքին ի խորանն
վկայութեան. եւ ելին երեքին [2]ի խո-
5 րանն վկայութեան"։ Եւ էջ Տէր սեամբ
ամպոյ, եւ եկաց առ դրան խորանին
վկայութեան. եւ կոչեցան Ահարոն եւ
6 Մարիամ, եւ ելին երկոքեան։ Եւ ասէ
ցնոսա Տէր, Լուարուք բանից իմոց. ե-
թէ լինիցի մարգարէ ի ձէնջ Տեառն,
տեսլեամբ երեւեցայց նմա, եւ երազով
7 խօսեցայց ընդ նմա։ Ոչ այնպէս՝ որպէս
ծառայն իմ Մովսէս, որ յամենայն տան
8 իմում հաւատարիմ է. Բերան ի բերան
խօսեցայց ընդ նմա, երեւօք եւ ոչ ա-
ռակօք. եւ զփառս Տեառն ետես. եւ
ընդէ՞ր ոչ երկերուք բամբասել զծա-
9 ռայն իմ Մովսէս։ Եւ եղեւ բարկութիւն
սրտմտութեան Տեառն ի վերայ նոցա,
10 եւ [3]գնացին։ Եւ ամպն վերացաւ ի խո-
րանէ անտի, եւ ահա Մարիամ բորոտեալ
էր իբրեւ զձիւն. եւ հայեցաւ Ահարոն
11 ընդ Մարիամ, եւ ահա բորոտեալ էր։ Եւ
ասէ Ահարոն ցՄովսէս, Խնդրեմ ի քէն,
տէր, մի՛ ածեր ի վերայ մեր մեղս. զի
12 անգիտացաք, եւ քանզի մեղաք։ Մի՛
լինիցի հանգոյն մահու, իբրեւ զվիժած
որ ելանիցէ յարգանդէ մօր եւ [4]ուտիցէ
13 զկէս" մարմնոյ նորա։ Եւ աղաղակեաց
Մովսէս առ Տէր եւ ասէ, Խնդրեմ ի
14 քէն, Աստուած, բժշկեա զնա։ Եւ ասէ
Տէր ցՄովսէս, Եթէ հօր իւրոյ թքա-
նելով թքեալ էր ընդ երեսս նորա, չա-
մաչէ՞ր զեւթն օր. մեկնեսցի զեւթն օր
արտաքոյ բանակին, եւ ապա մտցէ։
15 Եւ զատուցաւ Մարիամ արտաքոյ բա-
նակին զեւթն օր. եւ ժողովուրդն ոչ
չուեաց, մինչեւ սրբեցաւ Մարիամ։

## Գլ. ԺԳ

1 Եւ ապա չուեաց ժողովուրդն յԱսե-
րովթայ, եւ բանակեցաւ յանապատին

[1] Եբրայեցին յառեալ, եւ եղեն յԱսերովթ

[2] Եբր. դրանն [3] Եբր. գնաց [4] Եբր. ապառնալ իցէ կէս

2 Փառանու ։ Եւ խօսեցաւ Տէր ընդ Մով-
3 սիսի եւ ասէ , Առաքեա արս եւ լրտե-
սեսցեն զերկիրն Քանանացւոց , զոր ես
տաց որդւոցն Իսրայէլի ի կալուածս .
այր մի ըստ ցեղի , ըստ տանց նահա-
պետաց իւրեանց առաքեսցես զնոսա՝
4 զամենայն զիշխանս ի նոցանէ ։ Եւ ա-
ռաքեաց զնոսա Մովսէս յանապատէն
Փառանու ըստ բանին Տեառն . ամենե-
քին արք գլխաւորք էին նոքա յորդ-
5 ւոցն Իսրայէլի ։ Եւ այս են անուանք
նոցա . ցեղին Ռուբենի , Սամամիէլ որ-
6 դի Զաքուրայ . Ցեղին Շմաւոնի , Սա-
7 փատ որդի Քուրեայ . Ցեղին Յուդայ ,
8 Քաղէբ որդի Յեփոնեայ . Ցեղին Իսա-
9 քարայ , Գողամ որդի Յովսեփայ. Ցեղին
10 Եփրեմայ , Աւսէս որդի Նաւեայ . Ցեղին
Բենիամինի , Փաղտի որդի Ռափուայ .
11 Ցեղին Զաբուղոնի , Յուդիէլ որդի Սու-
12 դիայ . Ցեղին Յովսեփայ՝ որդւոցն Մա-
13 նասէի , Գադդէ որդի Սուսայ . Ցեղին
14 Դանայ , Ամիէլ որդի Գամայի . Ցեղին
15 Ասերայ , Սաթուր որդի Միքայէլի . Ցե-
ղին Նեփթաղիմայ , Աբի որդի Յաբիայ.
16 Ցեղին Գադայ, Գուդիէլ որդի Մակքեայ։
17 Այս անուանք են արանցն՝ զոր առաք-
եաց [1]Տէր լրտեսել զերկիրն Քանանաց-
ւոց . եւ անուանեաց Մովսէս զանուն
18 Աւսեայ որդւոյ Նաւեայ՝ Յեսու ։ Եւ ա-
ռաքեաց զնոսա Մովսէս [2]յանապատէն
Փառանու" լրտեսել զերկիրն Քանանաց-
ւոց , եւ ասէ ցնոսա , Ելէք ընդ [3]անա-
19 պատ եւ ամբարձջիք ի լեառնն . Եւ
տեսջիք զերկիրն զինչ իցէ , եւ զժողո-
վուրդն որ նստի ի նմա , եթէ զօրա-
ւորագո՞յն իցէ թէ անաւագ , եթէ սա-
20 կա՞ւք իցեն եթէ բազումք . Եւ զի՞նչ իցէ
երկիրն յորում նոքա բնակեալ իցեն ,
եթէ բարւո՞ք իցէ եթէ չար . եւ զի՞նչ ի-
ցեն քաղաքքն յորս նոքա բնակեալ են,
պարսպաւո՞րք իցեն եթէ անպարիսպք .
21 Եւ զի՞նչ իցէ երկիրն , պարա՞րտ իցէ
եթէ տկար . եթէ իցէ՞ ի նմա ծառա-
տունկ եթէ ոչ ։ Եւ ժրասջիք , առջիք
ի պտղոյ երկրին ։ Եւ [4]աւուրք գար-
նայնոյ էին աւուրքն" խայծուածոյ խա-
22 ղողոյ ։ Եւ ելեալ լրտեսեցին զերկիրն
յանապատէն Սինայ մինչեւ ցՌոոբ ի
23 մուտս [5]Եփրաթայ ։ Ելին ընդ [3]անա-

[1] Եբր. Մովսէս [2] Եբր. պ—ի—ե [3] Եբր. Հարաւակողմն [4] Եբր. աւուրքն էին աւուրք [5] Եբր. Եմաթայ

պատն եւ եկին մինչեւ ցՔեբրոն . եւ անդ
Աքիմանն եւ Սէսի եւ Թաղամի , ազգքն
Ենակայ . (եւ Քեբրոն եւթն ամաւ յա-
ռաջագոյն շինեալ էր քան զՏայանիս Ե-
24 գիպտացւոց ։ ) Եւ եկին մինչեւ ցՁորն
ողկուզոյ, [2]եւ լրտեսեցին զնա" եւ հատին
անտի ուռ որթոյ , եւ ողկոյզ մի խաղո-
ղոյ ի նմա , եւ բարձին զնա լծակօք , եւ
25 ի նռնենէ եւ ի թզոյ ։ Եւ անուանեցին
զանուն տեղւոյն՝ Ձոր ողկուզոյ , վասն
ողկուզին զոր հատին անտի որդիքն Իս-
26 րայէլի ։ Եւ դարձան անդրէն [2]որդիքն
Իսրայէլի" լրտեսեալ զերկիրն յետ ա-
27 ւուրց քառասնից . Եւ հասեալ եկին առ
Մովսէս եւ առ Ահարոն , եւ առ ամենայն
ժողովուրդ որդւոցն Իսրայէլի յանապատն
Փառան Կադէս . եւ ետուն նոցա զրոյց
եւ ամենայն ժողովրդեանն . եւ ցուցին
28 զպտուղ երկրին ։ Եւ պատմեցին նմա , եւ
ասեն ցնա , Չոգաք յերկիրն յոր առա-
քեցեր զմեզ . երկիր՝ որ բղխէ զկաթն
29 եւ զմեղր, եւ այս է պտուղ նորա ։ Բայց
ազգն սաստիկ [6]էր որ բնակեալ [6]էին ի
նմա , եւ քաղաքք ամուրք եւ պարս-
պաւորք եւ մեծամեծք յոյժ . եւ զազգն
30 Ենակայ տեսաք անդ ։ Եւ Ամաղէկ բնակ-
եալ [6]էր յերկրին ընդ հարաւակողմն . եւ
Քետացին [2]եւ Խեւացին" եւ Յեբուսացին
եւ Ամորհացին բնակեալ են առ լերամբքն,
եւ Քանանացին առ ծովեզերբն եւ առ
31 Յորդանանաւ ։ Լռեցոյց Քաղէբ զժողո-
վուրդն ի Մովսիսէ , եւ ասէ ցնոսա, [2]Ոչ
այդպէս է . այլ" ելանելով ելցուք եւ ժա-
ռանգեսցուք զնա . զի կարող եմք յաղ-
32 թել նոցա։ Եւ արքն որ ընդ նմա երթեալ
էին՝ ասէին , Ոչ ելցուք , քանզի ոչ կա-
րեմք երթալ ի վերայ ազգին . զի զօրա-
33 գոյն քան զմեզ է յոյժ ։ Եւ զարհուրե-
ցուցին երկրաւն զոր լրտեսեցին՝ զորդիսն
Իսրայէլի եւ ասեն , Երկիրն ընդ որ մեք
անցաք լրտեսել զնա , երկիր մարդա-
ծախ է բնակչաց իւրոց . եւ ամենայն
ազգն զոր տեսաք ի նմա՝ արք յաղթա-
34 հասակք են . Տեսաք անդ եւ [7]սկայս եւ
էաք յաչս նոցա իբրեւ մարախ" ։

## Գլ . ԺԴ

1 Եւ ձայն բարձին ամենայն ժողովուրդն ,
եւ ելաց ազգն զգիշերն [8]զայն ողջոյն ։

[6] Եբր. է [7] Եբր. սկայս, զորդիսն Ենակայ ի հսկայից. եւ էաք յաչս մեր իբրեւ մարախ եւ այնպէս էաք յաչս նոցա [8] Եբր. զայն ։ (2) Եւ տրտնջեցին

2 Եւ տրտնջեաց ժողովուրդն" զՄովսիսէ
եւ զԱհարոնէ, ամենայն որդիքն Իսրա-
յելի. եւ ասէ ցնոսա ամենայն ժողո-
վուրդն, Լաւ էր եթէ մեռեալ էաք յերկ-
րին Եգիպտացւոց. կամ թէ աստէն յա-
3 նապատի աստ խսկ մեռանիցաք։ Եւ ընդէ՞ր
[1]տանիցի զմեզ Տէր յերկիրն յայն" անկա-
նել մեզ պատերազմաւ, եւ կանայք մեր
եւ որդիք մեր լինիցին ի յափշտակու-
թիւն. եւ արդ լաւ իցէ մեզ դառնալ
4 անդրէն յԵգիպտոս։ Եւ ասէ այր ցընկեր,
Արասցուք զօրավար, եւ դարձցուք յԵ-
5 գիպտոս։ Եւ անկան Մովսէս եւ Ահարոն
ի վերայ երեսաց իւրեանց առաջի ամենայն
6 ժողովրդեան որդւոցն Իսրայելի։ Բայց
Յեսու որդի Նաւեայ, եւ Քաղէբ որդի Յե-
փոնեայ ի լրտեսաց երկրին՝ պատառեցին
7 զհանդերձս իւրեանց. Եւ խօսեցան ընդ
ամենայն ժողովրդեան որդւոցն Իսրայելի
եւ ասեն, Երկիրն զոր մեք լրտեսեցաք՝
8 երկիր բարի է յոյժ։ Եթէ հաճեսցի միայն
ընդ մեզ Տէր, եւ տարցի յերկիրն յայն,
եւ տացէ զնա մեզ, երկիր է որ բղխէ
9 զկաթն եւ զմեղր։ Բայց ի Տեառնէ միայն
ապստամբք մի՛ լինիցիք, եւ ի ժողովրդե-
նէ երկրին մի՛ երկնչիջիք, քանզի կե-
րակուր մեր են. զի մեկնեցաւ ի նոցա-
նէ [2]Տէր, եւ ընդ մեզ է Տէր. մի՛ զան-
10 գիտիցէք ի նոցանէ։ Եւ ասաց ամենայն
ժողովուրդն քարկոծել զնոսա քարամբք.
եւ փառքն Տեառն երեւեցան ամպով ի
վերայ խորանին վկայութեան յանդիման
11 ամենայն որդւոցն Իսրայելի։ Եւ ասէ
Տէր ցՄովսէս, Մինչեւ յե՞րբ բարկացու-
ցանէ զիս ժողովուրդդ, եւ մինչեւ յե՞րբ
ոչ հաւատան ինձ ամենայն նշանօքն զոր
12 արարի ի միջի դոցա։ [3]Թոյլ տուր ինձ՝
եւ" հարից զդոսա մահուամբ, եւ կորու-
սից զդոսա. եւ զքեզ [3]եւ զտուն հօր քո"
արարից յազգ մեծ եւ ի [4]բազում քան
13 զայդ։ Եւ ասէ Մովսէս ցՏէր, Իսկ արդ
լսիցեն Եգիպտացիքն եթէ դու հաներ զօ-
րութեամբ քո [3]մեծաւ զժողովուրդս զայս
14 ի նոցանէ, Այլ եւ ամենայն բնակիչք
երկրիս այսորիկ լսիցեն թէ դու, Տէր, ի
ժողովրդեանս յայսմիկ ես որ դէմ յան-
դիման երեւիս դու, Տէր, եւ ամպ քո
կայ ի վերայ դոցա, եւ սեամբ ամպոյ
երթաս դու առաջի դոցա ի տուէ, եւ
15 սեամբ հրոյ ի գիշերի։ Եւ սատակիցես
զժողովուրդս քո զայս իբրեւ զայր մի,
եւ խօսիցին ազգքն որ լուան զանուանէ
16 քումմէ, եւ ասիցեն, Վասն զի ոչ կա-
րէր տանել Տէր զժողովուրդն զայն յեր-
կիրն զոր երդուաւ նոցա, արկ զնոսա
17 տապաստ յանապատի անդ։ Եւ արդ
բարձրասցի ձեռն քո, Տէր, որպէս խօ-
18 սեցար եւ ասացեր, Թէ Տէր երկայնա-
միտ է եւ բազումողորմ [3]եւ ճշմարիտ",
բառնայ զանօրէնութիւնս [3]եւ զանիրա-
ւութիւնս" եւ զմեղս. եւ սրբելով ոչ
սրբէ զպարտաւորն, հատուցանէ զմեղս
հարանց յորդիս մինչեւ յերիս եւ ի չորս
19 ազգս. Թող զմեղս ժողովրդեան քո ըստ
մեծի ողորմութեան քում, որպէս նե-
րեցեր դոցա յԵգիպտոսէ մինչեւ ցայժմ։
20 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ներեցից դոցա
21 ըստ բանի քում. Բայց կենդանի եմ ես,
[3]եւ կենդանի է անուն իմ," եւ լցցեն
22 փառք Տեառն զամենայն երկիր. Զի ա-
մենայն արք՝ որ տեսին զփառս իմ եւ
զնշանս զոր արարի ես յԵգիպտոս եւ
յանապատիս յայսմիկ, եւ փորձեցին զիս
այս տասն անգամ, եւ ոչ լուան ձայնի
23 իմում, Թէ տեսանիցեն զերկիրն զոր
երդուայ հարցն նոցա. [3]այլ որդիք նոցա
որ են աստ ընդ իս, որ ոչ գիտեն զչար
կամ զբարի, ամենայն մանուկ տխմար,
նոցա տաց զերկիրն." եւ ամենեքին որ
24 բարկացուցին զիս՝ ոչ տեսցեն զնա. Բայց
Քաղէբ ծառայ իմ յորում եղեւ հոգի այլ,
եւ եկն զհետ իմ, տարայց զնա յերկիրն
յոր եմուտ, եւ զաւակ նորա ժառան-
25 գեսցէ զնա։ Եւ Ամաղէկ եւ Քանանա-
ցին բնակեալ են ի ձորն. բայց դուք
վաղիւ դարձարուք եւ չուեցէք յանա-
պատէն ընդ ճանապարհ Կարմիր ծովուն։
26 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ
27 Ահարոնի եւ ասէ, Մինչեւ յե՞րբ զժո-
ղովուրդդ զայդ չար կրիցեմ, եւ դոքա
տրտնջեն առաջի իմ. զտրտունջ որդ-
ւոցն Իսրայելի որ տրտնջեն զձէնջ՝ լուայ։
28 Արդ ասասցես ցնոսա, Կենդանի եմ ես,
ասէ Տէր, եթէ ոչ որպէս խօսեցայք յա-
29 կանջս իմ՝ նոյնպէս արարից ձեզ. Յա-
նապատիս յայսմիկ անկցին ոսկերք ձեր.
եւ ամենայն համարք ձեր, եւ մոեալքն
ի ձէնջ ի համար՝ ի քսանամենից եւ ի վեր՝
30 որ տրտնջեցին զինէն, Թէ մտանիցեն
յերկիրն յոր համբարձի զձեռն իմ բնա-
կեցուցանել զձեզ ի նմա, բայց Քաղէբ՝
31 որդի Յեփոնեայ, եւ Յեսու Նաւեան։ Եւ

[1]Եբր. ած զմեզ Տէր յերկիրս յայս [2]Եբր. հովանին իւրեանց [3]Յեբր. պակասէ [4]Եբր. հզօր

զորդիսն զորմէ ասացէք թէ ի յափշտա-
կութիւն լինիցին՝ տարայց զնոսա յեր-
կիրն, եւ ժառանգեսցեն զնա, յորմէ
32 դուքն յափրացորուք։ Եւ ոսկերք ձեր
33 անկցին աստէն յանապատիս։ Եւ որդիք
ձեր ճարակեսցին յանապատի աստ ամս
քառասուն, եւ բարձցեն զպոռնկու-
թիւն ձեր, մինչեւ մաշեսցին ոսկերք
34 ձեր յանապատի աստ։ Ըստ թուոյ ա-
ւուրցն [1]քառասնից, որ ընդ տարւոյ
ընդունիցիք զմեղս ձեր՝ զքառասուն ամ,
եւ ծանիջիք զսրտմտութիւն բարկու-
35 թեան իմոյ։ Ես Տէր խօսեցայ, եթէ
ոչ արարից ժողովրդեանդ այդմիկ չարի
յարուցելոյ ի վերայ իմ. յանապատի աստ
36 ծախիցին, եւ աստէն մեռանիցին։ Եւ
արքն զորս առաքեաց Մովսէս լրտեսել
զերկիրն եւ եկեալ բամբասեցին զնմանէ
առ ժողովրդեանն՝ հանել համբաւ չար
37 զերկրէն, Մեռան արքն այնոքիկ որ
հանին համբաւ չար զերկրէն՝ չարաչար
38 հարուածովք առաջի Տեառն։ Եւ Յեսու
որդի Նաւեայ եւ Քաղէբ որդի Յեփոն-
նեայ միայն ապրեցան յարանցն յայնցանէ
39 որ երթեալ էին լրտեսել զերկիրն։ Եւ
խօսեցաւ Մովսէս զպատգամս զայս առ
ամենայն որդիսն Իսրայելի, եւ սուգ առ
40 ժողովուրդն յոյժ։ Եւ կանխեալ ընդ
առաւօտն ելին ի գլուխ լերինն եւ ա-
սեն, Ահաւասիկ կամք մեք, ելցուք ի
41 տեղին զոր ասաց Տէր, զի մեղաք։ Եւ
ասէ Մովսէս, Ընդէ՞ր [2]անցէք զբանիւ
42 Տեառն, եւ ոչ աջողեսցի ձեզ։ Մի՛ ելա-
նէք, զի ոչ է Տէր ընդ ձեզ, եւ անկանի-
43 ցիք առաջի թշնամեաց ձերոց. Զի Ամա-
ղէկ եւ Քանանացին են անդ առաջի ձեր,
եւ անկանիցիք սրով. փոխանակ զի դար-
ձայք յետս եւ հեստեցէք Տեառն, եւ ոչ
44 լինիցի Տէր ընդ ձեզ։ Եւ անսաստեալ
ելին ի գլուխ լերինն. բայց տապանակ
կտակարանացն Տեառն եւ Մովսէս ոչ
45 շարժեցան ի բանակէ անտի։ Էջ Ամա-
ղէկ եւ Քանանացին որ բնակեալ էր ի
լերինն, եւ հարին զնոսա եւ կոտորե-
46 ցին զնոսա մինչեւ ցՀերմա։ [3]Եւ դար-
ձան անդրէն ի բանակն։"

## ԳԼ. ԺԵ

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
2 Խօսեաց ընդ որդիսդ Իսրայելի եւ ասա-
ցես ցդոսա, Յորժամ մտանիցէք յերկիրն
3 բնակութեան ձերոյ զոր ես տաց ձեզ, Եւ
առնիցէք [4]ողջակէզ Տեառն՝ եւ ողջըն-
ծայ ի զոհ, մեծացուցանել" զուխտն կամ
զկամաւն, կամ ի տօնս ձեր առնել հոտ
անուշից Տեառն, եթէ յարջառոյ եւ եթէ
4 ի հօտից, Եւ բերցէ որ մատուցանիցէ
զպատարագն իւր Տեառն, զոհ նաշհոյ
զտասանորդ գրուին՝ զանգեալ իւղով,
5 չորրորդաւ զորակին։ Եւ գինի ի նուէր
զչորրորդ զորակին առնիցէք ըստ զոհին
կամ ըստ ողջակիզին առ գառն մի. [5]այն-
չափ առնիցես ընծայ ի հոտ անուշից
6 Տեառն. Եւ խոյին յորժամ առնիցես զնա
յողջակէզ կամ ի զոհ," արասցես զզոհ
նաշհոյն երկուս տասանորդս զանգեալ
7 իւղով երրորդիւ զորակին. Եւ գինի ի
նուէր զերրորդ զորակին մատուցանի-
8 ցէք ի հոտ անուշից Տեառն։ Ապա թէ
յարջառոց առնիցէք յողջակէզ կամ ի
զոհ, [6]մեծացուցանել զուխտն [7]ի փրկու-
9 թիւն Տեառն, Մատուսցէ ըստ զուարա-
կին զոհ նաշհոյ՝ երիս տասանորդս զան-
10 գեալ իւղով կիսով զորակին. Եւ գինի ի
նուէր՝ կէս զորակին, ընծայ ի հոտ ա-
11 նուշից Տեառն։ Այնպէս առնիցես միում
զուարակին, կամ միում խոյին, կամ
միում գառինն, յօդեաց կամ յայծեաց։
12 Ըստ թուոյ նոցա, որպէս զինչ առնիցէք
նոյնպէս արասջիք միումն ըստ իւրա-
13 քանչիւր թուոյ նոցա։ Ամենայն բնակն
նոյնպէս արասցէ, նոյնպիսի ընծայս մա-
14 տուցանել ի հոտ անուշից Տեառն։ Եւ
եթէ եկ ոք յարեսցի ի ձեզ յերկրին ձե-
րում, որ լինիցի առ ձեզ յազգս ձեր,
արասցէ ընծայ ի հոտ անուշից Տեառն.
որպէս դուքն առնիցէք՝ նոյնպէս առնիցէ
15 եւ [8]եկն եւ ժողովուրդն Տեառն։ Օրէն"
մի եւ նոյն կացցէ ձեր եւ եկացն որ յարի-
ցին ի ձեզ. օրէն յաւիտենական յազգս
ձեր. որպէս եւ դուքն իցէք, եւ եկն
16 լինիցի առաջի Տեառն։ Օրէն մի եւ նոյն
կացցէ, եւ իրաւունք մի եւ նոյն լինի-
ցին՝ ձեր եւ եկին որ յեցեալ իցէ ի ձեզ։
17 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
18 Խօսեաց ընդ որդիսդ Իսրայելի եւ ասա-
ցես ցդոսա, Ի մտանել ձեր յերկիրն յոր
19 ես տարայց զձեզ, Եւ եղիցի յորժամ

[1] Եբր. յորս լրտեսեցէք զերկիրն աւուրս քառասուն [2] Եբր. անցանէք [3] 3Եբր. դ—խ—ն

[4] Եբր. պատարագ Տեառն՝ ողջակէզ կամ զոհ ի կատարել [5] Եբր. (6) Կամ առ խոյ [6] Եբր. ի կատարել [7] Եբր. կամ զխաղաղականս [8] Եբր. նա։ (15) Ո՛վ ժողովուրդ, օրէն

20 ուտիցէք զուք ի հացէ երկրին, [1]Առջիք
հաս ի նուէր Տեառն զառաջին [զան-
գուածոյ ձերոյ, եւ տարջիք զհաց հասին
Տեառն, զատուսջիք զայն Տեառն որպէս
զհասն ի կալոյ. նոյնպէս եւ զայն զատու-
21 ցանիցէք՝ Զառաջին զանգուածոյն ձերոյ,
եւ տաջիք Տեառն հաս յազգս ձեր":
22 Իսկ յորժամ յանցանիցէք, եւ ոչ առ-
նիցէք զամենայն զպատուիրանս զայ-
սոսիկ զոր խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի,
23 Որպէս հրաման ետ ձեզ Տէր ի ձեռն
Մովսիսի, յօրէ յորմէ հրաման ետ ձեզ
Տէր եւ յառ յապա ժամանակս յազգս ձեր.
24 Եւ եղիցի եթէ յաչաց ժողովրդեանն մրի-
պիցի ակամայ ինչ, արասցէ ժողովուրդն
զուարակ մի յանդէոյ [2]անարատ յողջա-
կէզ ի հոտ անուշից Տեառն. եւ զոհ ըստ
նմին եւ նուէր ըստ նմին պայմանի, եւ
25 նոխազ մի յայծեաց վասն մեղաց: Եւ
քաւեսցէ քահանայն վասն ամենայն ժո-
ղովրդեան որդւոցն Իսրայելի, եւ թողցի
նոցա, զի ակամայ է, եւ նոքա մատու-
ցին զպատարագն իւրեանց ընծայ Տեառն՝
վասն մեղաց իւրեանց առաջի Տեառն
26 յաղագս ակամայիցն իւրեանց. Եւ թողցի
ամենայն ժողովրդեան որդւոցն Իսրա-
յելի, եւ եկին յեցելոյ ի ձեզ. զի ամե-
նայն ժողովրդեանն է ակամայն:
27 Եւ եթէ մի անձն մեղիցէ ակամայ,
մատուսցէ այծ մի տարեւոր վասն մե-
28 ղաց. Եւ քաւեսցէ քահանայն ի վերայ
անձին ակամայացելոյ եւ մեղուցելոյ ա-
ռաջի Տեառն ակամայ, քաւել վասն
29 նորա[3]: Բնակին որդւոցն Իսրայելի եւ
եկին յեցելոյ ի նոսա՝ օրէն մի եւ նոյն
կացցէ որ ինչ առնիցէ ոք ակամայ:
30 Եւ անձն որ առնիցէ ձեռամբ հպար-
տութեան ի բնակաց կամ յեկաց, բար-
կացոյց նա զՏէր, սատակեսցի անձն այն
31 ի ժողովրդենէ իւրմէ: Զի զբանն Տեառն
խոտեաց, եւ զպատուիրանս նորա ցրեաց,
ջնջելով ջնջեսցի անձնն այն ի ժողովրդե-
նէ իւրմէ. զի մեղք նորա ի նմա են:
32 Եւ էին որդիքն Իսրայելի յանապատի
անդ եւ գտին այր մի որ քաղէր փայտ
33 յաւուր շաբաթու: Եւ մատուցին զնա
որք գտինն զի քաղէր փայտ յաւուր շա-
բաթու՝ առ Մովսէս եւ առ Ահարոն՝ եւ
առ ամենայն ժողովուրդ [2]որդւոցն Իս-
34 րայելի": Եւ եդուն զնա ի պահ, զի [4]ոչ
35 ընտրեցին" թէ զինչ առնիցեն նմա: Եւ
խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
Մահու մեռցի այրն. քարամբք քարկո-
ծեսցեն զնա ամենայն ժողովուրդն ար-
36 տաքոյ բանակին: Եւ հանին զնա ամե-
նայն ժողովուրդն արտաքոյ բանակին,
եւ քարկոծեցին զնա [5]ամենայն ժողո-
վուրդն արտաքոյ բանակին" որպէս հրա-
մայեաց Տէր Մովսիսի:
37 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
38 Խօսեաց ընդ որդիսն Իսրայելի եւ ասաս-
ցես ցնոսա, զի արասցեն իւրեանց ծոպս
ի տտունս հանդերձից իւրեանց յազգս
իւրեանց. եւ դնիցէք ի վերայ ծոպից
39 տտնոցն ասղանի կապուտակ. Եւ լինիցի
այն ձեզ ի ծոպսն, եւ տեսանիցէք զայն
եւ յիշիցէք զամենայն զպատուիրանս
Տեառն առնել զնոսա. եւ ոչ խոտորիցիք
զկնի [6]մտաց եւ աչաց ձերոց, որով զուքն
40 պոռնկիք զկնի նոցա. Զի յիշիցէք եւ
առնիցէք զամենայն զպատուիրանս իմ,
եւ եղիջիք սուրբք Աստուծոյ ձերում:
41 Զի ես եմ Տէր Աստուած ձեր որ հանի
զձեզ յերկրէն Եգիպտացւոց լինել ձեզ
Աստուած. ես եմ Տէր՝ Աստուած ձեր:

## Գլ. ԺԶ

1 Եւ [7]խօսեցաւ Կորխ՝ որդի Իսահառայ
որդւոյ Կահաթու որդւոյ Ղեւեայ, եւ
Դաթան եւ Աբիրոն որդիք Եղիաբայ [8]որդ-
ւոյ Ռուբենի, եւ Աւնան որդի Փաղեթայ
2 որդւոյ" Ռուբենի, Եւ կացին հակա-
ռակ Մովսիսի, եւ երկերիւր եւ յիսուն
այր յորդւոցն Իսրայելի գլխաւորք ժո-
ղովրդեանն՝ խորհրդականք խորհրդոց եւ
3 արք անուանիք: Կուտեցան ի վերայ Մով-
սիսի եւ Ահարոնի եւ ասեն, Շատ լիցի
ձեզ, զի ամենայն ժողովուրդն եւ ամե-
նեքեան սուրբք են, եւ Տէր ի միջի նո-
ցա. եւ արդ ընդէ՞ր ճոխացեալ էք ի վե-
4 րայ ժողովրդեանդ Տեառն: Եւ լուեալ
Մովսիսի՝ անկաւ ի վերայ երեսաց իւրոց.
5 Եւ խօսեցաւ ընդ Կորխայ եւ ընդ ամե-
նայն ժողովրդեան նորա, եւ ասէ, [9]Ցայց
եւ եւ ծանեաւ Աստուած" զիւրսն եւ

[1]Եբր. մատուցէք ընծայ վերացման Տեառն. (20) Յառաջին զանգուածոյն ձերմէ մատուցջիք նուէր վերացման պան մի. որպէս զնուէր վերացման կալոյ՝ այնպէս վերացուցջիք զնա: (21) Զառաջին զանգուածոյ ձերոյ տաջիք նուէր վերացման Տեառն յազգս ձեր [2]Եբր. պակասէ [3]Եբր. այնպէս յանձն, եւ թողցի նմա

[4]Եբր. չէր յայտ [5]Եբր. եւ մեռաւ, [6]Կամ, սրտից [7]Եբր. ա՛ռ որ [8]Եբր. եւ Աւնան որդի Փաղեթայ, որդիք [9]Եբր. Առաւօտուն ցուցցէ Տէր

զատուրին, եւ [1]մերձեցոյց առ ինքն. եւ
զորս [2]ոչն ընտրեաց՝ [1]ոչ մերձեցոյց" առ
6 ինքն։ Արդ զայս արարէք. առէք ձեզ
զբուրվառս ձեր, Կորխ եւ ամենայն
7 ժողովուրդ իւր. Եւ դիք ի նոսա հուր,
եւ արկէք ի նոսա խունկ առաջի Տեառն
ի վաղիւ. եւ եղիցի այր զոր ընտրեսցէ
Տէր՝ նա է սուրբ. շատ լիցի ձեզ, որդիք
8 Ղեւեայ։ Եւ ասէ Մովսէս ցԿորխ, Լուա-
9 րուք ինձ, որդիք Ղեւեայ. Միթէ փո՞քր
ինչ իցէ ձեզ այդ, զի զատոյց զձեզ Աս-
տուած Իսրայելի ի ժողովրդենէ իւրմէ,
եւ մերձեցոյց զձեզ առ ինքն՝ պաշտել
զպաշտօն խորանին Տեառն, եւ կալ ա-
10 ռաջի ժողովրդեանն պաշտել զնա. Եւ
մերձեցոյց զքեզ առ ինքն, եւ զամենայն
եղբարս քո զորդիսն Ղեւեայ ընդ քեզ,
11 եւ քահանայանա՞լ եւս խնդրէք։ Եւ այդ-
պէս դու եւ ժողովուրդ քո գումարեալ
էք զԱստուծոյ. եւ Ահարոն ո՞վ է զի
12 տրտնջէք զնմանէ։ Եւ առաքեաց Մով-
սէս կոչել զԴաթան եւ զԱբիրոն, զոր-
դիսն Եղիաբու. եւ ասեն, Ոչ եկեսցուք.
13 Միթէ փո՞քր իցէ այն զի հաներ զմեզ
յերկրէն որ բղխէր զկաթն եւ զմեղր,
սպանանել զմեզ յանապատի աստ. եւ
արդ սաստե՞ս եւս մեզ, եւ զո՞ւ ես իշ-
14 խան։ Միթէ յերկի՞րն որ բղխէր զկաթն
եւ զմեղր տարար զմեզ, եւ ետուր մեզ
անդ ժառանգութիւն անդոց եւ այգեաց.
[3]եթէ զաչս մեր բրեսցես, ոչ եկեսցուք
15 առ քեզ"։ Եւ ծանրացասումն եղեւ յոյժ
Մովսէս, եւ ասէ ցՏէր, Մի՛ հայիր ի
զոհսն նոցա. [4]զի զցանկալի ինչ" ուրուք
ի նոցանէ ես ոչ առի, եւ ոչ զոք ի նոցա-
16 նէ չարչարեցի։ Եւ ասէ Մովսէս ցԿորխ,
[5]Սրբեա զժողովուրդ քո, եւ" եղիջիք
պատրաստք առաջի Տեառն, դու [6]եւ
17 Ահարոն" առ վաղիւ. Եւ առէք իւրա-
քանչիւր զբուրվառ իւր, եւ դիջիք ի
վերայ նոցա խունկս, եւ մատուցջիք ա-
ռաջի Տեառն իւրաքանչիւր զբուրվառ
իւր, զերկերիւր եւ զյիսուն բուրվառսն,
եւ դու եւ Ահարոն զիւրաքանչիւր բուր-
18 վառ իւր։ [7]Եւ եդին ի նոսա հուր, եւ
արկին ի նոսա խունկ, եւ կացին առ դրան
խորանին վկայութեան, [8]Մովսէս եւ Ա-

[1]Եբր. մերձեցուսցէ [2]Յ Եբր. ընտրէ [3]Եբր. միթէ զաչս արանցդ այդոցիկ բրեսցե՞ս. ոչ եկեսցուք [4]Եբր. զէշ [5]Եբր. Դու եւ ամենայն ժողովուրդ քո [6]Եբր. եւ նոքա եւ Ահարոն [7]Եբր. Եւ առեալ իւրաքանչիւր զբուրվառ իւր՝ [8]Եբր. նոյնպէս Մովսէս

19 հարոն։ Եւ կուտեաց ի վերայ նոցա Կորխ
զամենայն ժողովուրդն իւր ի դուռն խո-
րանին վկայութեան. եւ երեւեցաւ փառք
Տեառն ամենայն ժողովրդեանն։
20 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ
21 Ահարոնի եւ ասէ, Մեկնեցարուք ի միջոյ
ժողովրդեանդ այդորիկ, եւ սատակեցից
22 զդոսա միանգամայն։ Անկան ի վերայ ե-
րեսաց իւրեանց եւ ասեն, Աստուած,
Աստուած հոգւոց ամենայն մարմնոց. եթէ
մի մարդ մեղաւ, ի վերայ ամենայն ժո-
ղովրդեա՞նդ գայցէ բարկութիւն Տեառն։
23 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ա-
24 սէ, Խօսեաց ընդ ժողովրդեանն եւ ասա-
ցես, Զատարուք շուրջ [9]զժողովրդեամբդ
25 Կորխայ եւ Դաթանայ եւ Աբիրոնի։ Եւ
յարեաւ Մովսէս եւ գնաց առ Դաթան եւ
Աբիրոն, եւ գնացին ընդ նմա [2]ամենայն
26 ծերքն Իսրայելի։ Եւ խօսեցաւ ընդ ժո-
ղովրդեանն եւ ասէ, Մեկնեցարուք ի
վրանաց արանց խստասրտացդ այդոցիկ,
եւ մի՛ մերձենայցէք յինչ ի դոցա, զի մի՛
կորնչիցիք ընդ ամենայն մեղս դոցա։
27 Եւ մեկնեցան [10]ի ժողովրդենէն Կորխայ"
շուրջ զնովօք. եւ Դաթան եւ Աբիրոն
ելին եւ կային առ դրան վրանաց իւր-
եանց, եւ կանայք նոցա եւ մանկունք
28 իւրեանց եւ աղխն իւրեանց։ Եւ ասէ
Մովսէս, Այսու գիտասջիք եթէ Տէր ա-
ռաքեաց զիս գործել զամենայն զգործս
29 զայսոսիկ, եւ եթէ ոչ յինէն ինչ է. Եթէ
ըստ մահու ամենայն մարդկան մեռանի-
ցին դոքա, կամ ըստ հանդիսի ամենայն
մարդկան լինիցի հանդէս դոցա, ապա
30 զիս Տէր ոչ առաքեաց։ Այլ թէ նորանշան
ինչ ցուցցէ Տէր, եւ բացեալ երկրի զբե-
րան իւր կլանիցէ զդոսա [2]եւ զտունս
դոցա" եւ զամենայն ինչ որ դոցա իցէ,
եւ իջանիցեն կենդանւոյն ի դժոխս,
գիտասջիք եթէ բարկացուցին արքդ
31 այդոքիկ զՏէր։ Եւ իբրեւ դադարեաց
ի խօսելոյ զբանս զայսոսիկ, պատա-
32 ռեցաւ երկիրն ի ներքոյ նոցա. Եւ
[11]բացաւ երկիր" եւ եկուլ զնոսա եւ
զտունս նոցա, եւ զմարդիկն որ էին
33 ընդ Կորխայ եւ զանասունս նոցա։ Եւ
իջին նոքա եւ որ ինչ էր նոցա կենդան-
ւոյն ի դժոխս. եւ ծածկեաց զնոսա եր-
կիրն, եւ կորեան ի միջոյ ժողովրդեանն։

[9]Եբր. զխորանաւդ [10]Եբր. առ ի խորանէն Կորխայ, Դաթանայ եւ Աբիրոնի [11]Եբր. եբաց երկիր զբերան իւր

34 Եւ ամենայն Իսրայէլ որ շուրջ զնոքօք
էր՝ փախեան ի ձայնէ նոցա. զի համա-
րէին թէ գուցէ կլանիցէ եւ զմեզ եր-
35 կիր։ Եւ ել հուր ի Տեառնէ եւ եկեր
զերկերիւր եւ զյիսուն այրն՝ որ մատու-
ցանէին զխունկսն։
36 Եւ [1]ասէ Տէր ցՄովսէս (37)Եւ" ցԵղիա-
զար ցորդին Ահարոնի ցքահանայ,[2]Բարձէք
զբուրուառս պղնձիս" ի միջոյ այրեցե-
լոցդ. եւ զհուրդ [3]օտար ցրուեսցես ի բաց.
38 Զի սրբեցան բուրուառքդ" մեղաւորացդ
այդոցիկ յոգիս իւրեանց, [4]եւ արասցես
զայդ" զբուսադս կռածոյս նուարտանս
սեղանոյն. զի մատուցան առաջի Տեառն
եւ սրբեցան. եւ եղիցին ի նշանակ որդ-
39 ւոցն Իսրայելի։ Եւ առ Եղիազար [5]որ-
դի Ահարոնի քահանայի" զբուրուառսն
պղնձիս զորս մատուցին այրեցեալքն,
40 եւ արար զբուսադս սեղանոյն ի յիշատակ
որդւոցն Իսրայելի, զի մի՛ մերձենայցէ
այլազգի ոք որ չիցէ ի զաւակէ Ահարոնի՝
դնել խունկս առաջի Տեառն, զի մի՛ լի-
նիցի իբրեւ զԿորխ եւ զխուժան նորա.
որպէս խօսեցաւ Տէր ի ձեռն Մովսիսի։
41 Եւ տրտնջեցին [6]որդիքն Իսրայելի ի
վաղիւ անդր զՄովսիսէ եւ զԱհարոնէ,
եւ ասեն, Դուք կոտորեցէք զժողովուրդն
42 Տեառն։ Եւ եղեւ ի կուտել ժողովրդեանն
ի վերայ Մովսիսի եւ Ահարոնի, [7]դիմե-
ցին ի խորանն վկայութեան, [8]եւ ծած-
կեաց զնա ամպն, եւ երեւեցան փառքն
43 Տեառն։ Եւ կացին Մովսէս եւ Ահարոն
44 յանդիման խորանին վկայութեան։ Եւ
խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի [9]եւ ընդ Ա-
45 հարոնի" եւ ասէ, Մեկնեցարուք ի միջոյ
ժողովրդեանդ այդորիկ եւ սատակեցից
զդոսա միանգամայն. եւ անկան ի վե-
46 րայ երեսաց իւրեանց։ Եւ ասէ Մովսէս
ցԱհարոն, Ա՛ռ դու զբուրուառն, եւ դիցես
ի նմա հուր ի սեղանոյ անտի, եւ արկ
ի նա խունկ, եւ տար վաղվաղակի ի բա-
նակն եւ քաւեսցես վասն նոցա. քանզի
ել բարկութիւն ի Տեառնէ եւ սկսաւ
47 սատակել զժողովուրդն։ Եւ առ Ահա-
րոն, որպէս խօսեցաւ ընդ նմա Մով-
սէս, եւ ընթացաւ ի ժողովուրդ անդր,
եւ ահա սկսեալ էր սատակումն ի ժո-
ղովրդեանն, եւ արկ զխունկն, եւ քաւ-
48 եաց վասն ժողովրդեանն. Եւ եկաց ի
մէջ մեռելոց եւ կենդանեաց. եւ դա-
49 դարեաց սատակումն։ Եւ եղեն մեռ-
եալք ի սատակմանն չորեքտասան հա-
զար եւ եւթն հարիւր, թող զմեռեալսն
50 վասն Կորխայ։ Եւ դարձաւ Ահարոն առ
Մովսէս ի դուռն խորանին վկայութեան,
եւ դադարեաց սատակումն։

[1]Եբր. խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ, (37) Ասա [2]Եբր. և բարձցէ զբուրուառսն [3]Եբր. ցրուեսցես ի բաց. զի սրբեցան. (38) Զբուրուառս [4]Եբր. արասցեն զնոսա [5]Եբր. քահանայ [6]Եբր. ամենայն ժողովուրդ որդւոցն [7]Եբր. հայեցան [8]Եբր. եւ ահա [9]Եբր. պակասէ

## ԳԼ. ԺԷ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ա-
2 սէ, Խօսեաց դու ընդ որդիսդ Իսրայելի,
եւ առցես ի նոցանէ գաւազանս ըստ
տանց նահապետաց իւրեանց՝ յամենայն
իշխանաց իւրեանց, ըստ տանց ազգաց
իւրեանց՝ երկոտասան գաւազան. եւ
զիւրաքանչիւր անուն գրեսցես ի վերայ
3 գաւազանի իւրոյ։ Եւ զանունն Ահարո-
նի գրեսցես ի վերայ [10]իւրոյ գաւազանի
եւ լիցէ գաւազան մի ըստ ցեղից Իսրա-
յելի՝ զոր ի տանց նահապետաց իւրեանց
4 տացեն". Եւ դիցես զնոսա ի խորանին
[11]վկայութեան՝ որով երեւեցայց քեզ"
5 անդ. Եւ եղիցի մարդոյ զոր ընտրեցից՝
գաւազանն իւր ծաղկեսցի. եւ բարձից
յինէն զտրտունջ որդւոցն Իսրայելի զոր
տրտնջեն նոքա զձէնջ։
6 Եւ խօսեցաւ Մովսէս ընդ որդիսն Իս-
րայելի. եւ ետուն ցնա ամենայն իշ-
խանքն նոցա զգաւազանս իւրեանց, գա-
ւազան միոյ իշխանի ըստ տանց նահա-
պետաց իւրեանց, երկոտասան գաւազան,
եւ գաւազանն Ահարոնի ի մէջ գաւա-
7 զանացն նոցա։ Եւ եդ Մովսէս զգաւա-
զանսն առաջի Տեառն ի խորանին վկա-
8 յութեան։ Եւ եղեւ ի վաղիւ անդր [12]մտին
Մովսէս եւ Ահարոն" ի խորանն վկայու-
թեան. եւ ահա զարդուցեալ գաւազանն
Ահարոնի ի տանն Ղեւեայ, եւ արձակ-
եաց շառաւիղ, եւ ծաղկեաց ծաղիկ, եւ
9 երեւեցոյց [13]ընկոյզ։ Եւ եհան Մովսէս
զգաւազանսն յերեսաց Տեառն առ ամե-
նայն որդիսն Իսրայելի, եւ տեսին. եւ
10 առ իւրաքանչիւր ոք զգաւազան իւր։ Եւ
ասէ Տէր ցՄովսէս, Դիր զգաւազանդ
Ահարոնի առաջի վկայութեանցն ի պա-
հեստ, ի նշանակ որդւոցն անհնազան-

[10]Եբր. գաւազանսն Ղեւեայ. զի գաւազան մի լիցի ըստ գլխոյ հարց նոցա [11]Եբր. ժողովոյ առաջի վկայութեանն ուր երեւեցայց ձեզ [12]Եբր. եմուտ Մովսէս [13]Եբր. նուշ

դից. եւ զազարեսցէ տրտունջն նոցա
11 յինէն եւ մի՛ մեռանիցին։ Եւ [1]արարին
Մովսէս եւ Ահարոն, որպէս հրաման ետ
12 Տէր Մովսիսի՝ նոյնպէս եւ արարին"։ Եւ
խօսեցան որդիքն Իսրայէլի ընդ Մով-
սիսի եւ ասեն, Ահաւասիկ սատակիմք,
13 կորնչիմք, ծախիմք. Ամենայն որ մեր-
ձենայ ի խորանն վկայութեան Տեառն՝
մեռանի. մինչեւ ի սպառ մեռանիցի՞մք։

## Գլ. ԺԸ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Ահարոնի եւ ասէ,
Դու եւ որդիք քո եւ տուն նահապետու-
թեան քո ընդ քեզ՝ առնուցուք զմեղս
սրբութեանցն. եւ դու եւ որդիք քո առ-
նուցուք զմեղս քահանայութեան ձերոյ։
2 Եւ զեղբարս քո զցեղն Ղեւեայ, զցեղ
հօր քո, մատուսցես առ քեզ, եւ յա-
ւելցին ի քեզ, եւ պաշտեսցեն զքեզ. եւ
դու եւ որդիք քո ընդ քեզ, յանդիման
3 խորանին վկայութեան։ Եւ պահեսցեն
զպահպանութիւնս քո, եւ զպահպանու-
թիւնս խորանին վկայութեան. բայց ի
սպասն իմ ի սուրբ եւ ի սեղանն մի՛
մերձեսցին, զի մի՛ մեռանիցին, եւ նո-
4 քա եւ դուք։ Եւ յաւելցին ի քեզ,
եւ պահեսցեն զպահպանութիւնս խորա-
նին վկայութեան ըստ ամենայն պաշ-
տաման խորանին. եւ օտարազգի մի՛
5 մերձեսցի առ ձեզ։ Եւ պահեսջիք զպահ-
պանութիւնս սրբութեանցն եւ զպահ-
պանութիւնս սեղանոյն, եւ ոչ եւս լի-
նիցի բարկութիւն յորդիսն Իսրայէլի։
6 Եւ ես առի զեղբարս ձեր զՂեւտացիս ի
միջոյ որդւոցն Իսրայէլի՝ փոխանակս
տուեալ Տեառն, պաշտել զպաշտօն խո-
7 րանին վկայութեան։ Եւ դու եւ որդիք
քո ընդ քեզ պահեսջիք զքահանայութիւն
ձեր ըստ ամենայն պայմանի սեղանոյն, եւ
զներքին կողմն վարագուրին, եւ պաշ-
տեսջիք զպաշտօն քահանայութեան ձե-
րոյ. եւ այլազգին որ մերձենայցէ՝ մեռցի։
8 Խօսեցաւ Տէր ընդ Ահարոնի եւ ասէ,
Ես ահաւասիկ ետու քեզ զպահեստ պտղոց
իմոց. յամենայն նուիրելոցն ինձ յորդ-
ւոցն Իսրայէլի՝ քեզ ետու զայն [2]ի պա-
տիւ, եւ որդւոց քոց [3]յետ քո", օրէն
9 յաւիտենական։ Եւ այս եղիցի [4]ձեզ ի
նուիրելոց սրբութեանցն ընծայից, յա-
մենայն պատարագաց նոցա եւ յամենայն
զոհիցն" նոցա, եւ յամենայնէ առ ի յան-
ցանացն նոցա, եւ յամենայնէ առ ի մե-
ղացն նոցա, զոր տայցեն ինձ յամենայն
սրբութեանցն՝ քեզ լիցի եւ որդւոց քոց։
10 Ի սրբութիւն սրբութեանցն կերիջիք
զայն. ամենայն արու ուտիցէ զայն, դու
եւ որդիք քո. զի սրբութիւնք եղիցին
11 քեզ։ Եւ այն եղիցի քեզ՝ [5]ի պտղոց տրոցն
նոցա, յամենայն նուիրաց" որդւոցն Իս-
րայէլի, քեզ ետու զայն եւ ուստերաց
եւ դստերաց քոց ընդ քեզ, օրէն յաւի-
տենական. ամենայն սուրբ ի տան քում
12 կերիցէ զայն։ Եւ զամենայն [6]պտուղ իւ-
ղոյ, եւ զամենայն [6]պտուղ գինւոյ եւ
ցորենոյ, [7]զոր տայցեն Տեառն զպտուղ
13 իւրեանց" քեզ ետու զայն։ Ամենայն
առաջինք արմտեաց յերկրին իւրեանց
զոր մատուսցեն Տեառն՝ քեզ լիցին, եւ
ամենայն սուրբ ի տան քում կերիցէ զայն։
14 Եւ ամենայն նուիրեալն յորդւոցն Իսրա-
15 յէլի քեզ լիցի։ Եւ ամենայն որ բանայ
զարգանդ՝ յամենայն մարմնոյ, զոր մա-
տուցանիցեն Տեառն ի մարդոյ մինչեւ
յանասուն՝ քեզ լիցի. այլ փրկելով փրկես-
ցես զանդրանիկս մարդկան, եւ զանդ-
րանիկս անասնոց անսրբոց փրկեսցես։
16 Եւ փրկանք նորա յամսօրէից [3]եւ ի վեր",
եւ գին նորա հինգ սիկղ ըստ սրբութեան
17 սիկղն, որ է քսան դանգ։ Բայց զանդ-
րանիկս արջառոց եւ զանդրանիկս ոչխարաց
եւ զանդրանիկս այծեաց ոչ փրկեսցես,
զի սուրբ են. եւ զարիւն նոցա հեղցես
առ սեղանովն, եւ զճարպն [8]հանցես ըն-
18 ծայ ի հոտ անուշից Տեառն. Եւ միսն
եղիցի քեզ, որպէս երբուծ [9]նուիրին եւ
19 երին աջոյ քեզ լիցի։ Զամենայն [10]ինչ հաս"
ի սրբութեանցն զոր [11]հանիցեն Տեառն
որդիքն Իսրայէլի՝ քեզ ետու եւ [3]որդւոց
քոց եւ" ուստերաց եւ դստերաց քոց ընդ
քեզ, օրէն յաւիտենական. քանզի ուխտ
աղի է առաջի Տեառն, քեզ եւ զաւակի
20 քում [12]յետ քո"։ Եւ խօսեցաւ Տէր ընդ
Ահարոնի եւ ասէ, Յերկրի նոցա մի՛ ժա-
ռանգեսցես, եւ բաժին քո ընդ նոսա մի՛
լիցի, զի ես եմ բաժին քո եւ ժառան-
գութիւն ի մէջ որդւոցն Իսրայէլի։

[1] Ոմանք. արար Մովսէս որպէս հրամայեաց նմա Տէր, նոյնպէս արար [2] Ոմանք. յաղագս օծութեան [3] Յոմանս. զկնի [4] Ոմանք. քեզ որ ի սրբութենէ սրբութեանցն առանց հրոյ. ամենայն պատարագ նոցա յամենայն ընծայէ հացի

[5] Ոմանք. վերացուցմն ընծայից նոցա, մինչեւ յամենայն երերուցմն [6] Ոմանք. պարարտութիւն [7] Ոմանք. զերախայրս նոցա զոր տացեն Տեառն՝ [8] Ոմանք. այրեսցես [9] Ոմանք. երերման [10] Ոմանք. վերացուցմն [11] Ոմանք. վերացուսցեն [12] Ոմանք. ընդ քեզ

21 Եւ որդւոցն Ղեւեայ ահա ետու զամե-
նայն տասանորդս Իսրայէլի ի ժառան-
գութիւն, փոխանակ պաշտաման նոցա
զոր նոքայն պաշտիցեն ի խորանին վկա-
22 յութեան ։ Եւ մի եւս մերձեսցին որդիքն
Իսրայէլի ի խորանն վկայութեան ընդու-
23 նել զմեղս մահաբերս ։ Եւ պաշտեսցէ
Ղեւտացին ինքն զպաշտօն խորանին
վկայութեան, եւ նոքա առցեն զմեղս
նոցա . օրէն յաւիտենական յազգս իւ-
եանց . եւ մի ժառանգեսցեն ժառանգու-
24 թիւն ի մէջ որդւոցն Իսրայէլի ։ Զի զտա-
սանորդս որդւոցն Իսրայէլի՝ զոր [1]զա-
տուսցեն Տեառն հաս" ետու Ղեւտաց-
ւոցն ի ժառանգութիւն . վասն այսորիկ
ասացի նոցա թէ ի մէջ որդւոցն Իսրա-
յէլի մի ժառանգեսցեն վիճակ ։
25 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ասէ,
26 Եւ ընդ Ղեւտացիսն խօսեսցիս եւ ասաս-
ցես ցնոսա, Եթէ առնուցուք յորդւոցն
Իսրայէլի տասանորդս զոր ետու [2]ձեզ,
հանիցէք եւ դուք անտի հաս" Տեառն՝
27 զտասանորդն ի տասանորդէ ։ Եւ համա-
րեսցի ձեզ [3]հասն ձեր իբրեւ զցորեան ի
28 կալոյ եւ իբրեւ զպտուղ ի հնձանէ ։ Այն-
պէս եւ դուք [4]հանիցէք ի հասից անտի"
Տեառն, յամենայն տասանորդաց ձերոց
զոր առնուցուք յորդւոցն Իսրայէլի, եւ
տայցէք ի նոցանէ [3]հաս Տեառն, Ահա-
29 րոնի քահանայի . Յամենայն տրոցն ձե-
րոց [5]հանիցէք հաս եւ յամենայն պտղոց"
30 զնուիրեալն ի նմանէ ։ Եւ ասասցես
ցնոսա, [6]Յորժամ հանիցէք զպտուղն
ի նմանէ" համարեսցի Ղեւտացւոցն իբ-
րեւ զարդիւնս ի կալոյ, եւ իբրեւ զպտուղ
31 ի հնձանէ ։ Եւ կերիջիք զայն յամենայն
տեղւոջ, դուք եւ տունք ձեր . զի վարձ
ձեր է այն, փոխանակ պաշտամանցն
32 ձերոց ի խորանին վկայութեան ։ Եւ մի
առնուցուք վասն այնորիկ մեղս, [7]յոր-
ժամ հանիցէք զպտուղն ի նմանէ զսրբու-
թիւն" որդւոցն Իսրայէլի ոչ պղծիցէք՝
զի մի մեռանիցիք ։

[1]Եբր. վերացուսցեն Տեառն վերացումն [2]Եբր. ձեզ ի նոցանէ ի ժառանգութիւն ձեր՝ յայնժամ վերացուսջիք եւ դուք անտի վերացումն [3]Եբր. վերացումն [4]Եբր. վերացուսջիք անտի վերացումն [5]Եբր. վերացուսջիք զամենայն վերացումն Տեառն յամենայն պարարտագունից նորա, [6]Եբր. Ի վերացուցանել ձեր զպարարտագոյնն նորա ի նմանէ, յայնժամ [7]Եբր. յորժամ վերացուցանիցէք զպարարտագոյնն նորա ի նմանէ, եւ զսրբութիւն

Գլ. ԺԹ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ընդ
2 Ահարոնի եւ ասէ, Այս որոշումն է օրի-
նին զոր պատուիրեաց Տէր [8]Մովսիսի եւ
ասէ, Խօսեաց ընդ որդիսն Իսրայէլի, եւ
առցեն առ քեզ երինջ մի կարմիր անա-
րատ, յորում ոչ գուցէ բիծ ինչ, եւ ոչ
3 իցէ մտեալ ընդ լծով ։ Եւ տացես զնա
ցԵղիազար քահանայ . եւ հանցեն զնա
արտաքոյ բանակին [8]ի տեղի սուրբ", եւ
4 սպանցեն զնա առաջի նորա ։ Եւ առցէ
Եղիազար [9]յարենէ նորա", եւ ցանեսցէ
յանդիման խորանին վկայութեան յարենէ
5 նորա եւթն անգամ ։ Եւ այրեսցեն զնա
առաջի նորա . եւ մորթ նորա եւ միս
նորա եւ արիւն նորա հանդերձ ապա-
6 ւառաւն իւրով այրեսցի ։ Եւ առցէ քա-
հանայն փայտ եղեւնեայ եւ զոպայ եւ
[10]կարմիր, եւ արկցեն ի մէջ այրեցածի
7 երինջուն ։ Եւ ողողեսցէ զհանդերձս իւր
քահանայն, եւ լուասցէ զմարմին իւր
ջրով, եւ ապա մտցէ ի բանակն . եւ ան-
սուրբ լիցի քահանայն մինչեւ ցերեկոյ ։
8 Եւ որ այրիցէն զնա՝ ողողեսցէ զհանդերձս
իւր, եւ լուասցէ զմարմին իւր ջրով,
9 եւ անսուրբ լիցի մինչեւ ցերեկոյ։ Եւ ժո-
ղովեսցէ այր սուրբ զմոխիր երինջուն, եւ
կուտեսցէ արտաքոյ բանակին ի սուրբ
տեղւոջ . եւ եղիցի ժողովրդեան որդ-
ւոցն Իսրայէլի ի պահեստ ջուր սրսկման,
10 զի սրբութիւն է ։ Եւ լուասցէ զմարմին
իւր որ ժողովիցէ զմոխիր երինջուն, եւ
ողողեսցէ զհանդերձս իւր, եւ անսուրբ
լիցի մինչեւ ցերեկոյ . եւ եղիցի ժո-
ղովրդեան որդւոցն Իսրայէլի եւ եկացն
յեկելոց ի նոսա օրէն յաւիտենական ։
11 Եւ որ մերձենայցէ ի մեռեալ ամենայն
անձին մարդոյ, անսուրբ լիցի զեւթն օր ։
12 Եւ սրբեսցի [11]նա յաւուրն երրորդի եւ
յաւուրն եւթներորդի, եւ ապա սուրբ
լիցի . ապա թէ ոչ սրբեսցի յաւուրն եր-
րորդի եւ յաւուրն եւթներորդի, մի լիցի
13 սուրբ ։ Ամենայն որ մերձենայցէ ի մեռ-
եալ անձին մարդոյ որ մեռանիցի, եւ
ոչ սրբեսցի, զխորանն Տեառն պղծեաց,
սատակեսցի անձն այն յԻսրայէլէ . զի
ջուրն սրսկման ոչ սրսկեցաւ ի վերայ
նորա, անսուրբ է, զի պղծութիւն իւր
14 ի նմա է ։ Եւ այս օրէն իցէ մարդոյ որ

[8]Յեբր. դուրս [9]Եբր. քահանայ յարենէ նորա մատամբ [10]Եբր. որդան կարմիր [11]Եբր. նովաւ

մեռանիցի ի [1]տան. ամենայն որ մտա-
նիցէ ի տունն եւ որ ինչ կայցէ ի տանն՝
15 անսուրբ լիցին զեւթն օր։ Եւ ամենայն
աման բաց որ ոչ իցէ խփեալ կամ սե-
16 րեկեալ՝ պիղծ լիցի։ Եւ ամենայն որ մեր-
ձենայցէ ընդ երեսս դաշտի ի վիրաւոր
կամ ի մեռեալ, կամ յոսկր մարդոյ կամ
17 ի գերեզման, պիղծ լիցի զեւթն օր։ Եւ
առցեն [2]պղծելոյն ի մոխրոյ այրեցելոյն
սրբութեանն", եւ արկցեն ի վերայ նորա
18 [3]ջուր յամանի. Եւ առցէ զոպայ, եւ
թացցէ ի ջուրն այր սուրբ, եւ ցանեսցէ
զտամբն եւ զկահիւն եւ զամանովքն եւ
զանձամբքն որ իցեն անդ, եւ զմերձե-
ցելովն յոսկր մարդոյ կամ ի վիրաւոր կամ
19 ի մեռեալ կամ ի գերեզման։ Եւ ցանեսցէ
սուրբն զպղծովն յաւուրն երրորդի եւ
յաւուրն եւթներորդի, եւ [4]սրբեսցի յա-
ւուրն եւթներորդի. եւ ողողեսցէ զհան-
դերձս իւր, եւ լուասցէ զմարմին իւր
ջրով, եւ [5]անսուրբ լիցի մինչեւ ցերե-
20 կոյ"։ Եւ մարդ որ պղծիցի եւ ոչ սրբես-
ցի, սատակեսցի անձն այն ի ժողովրդենէ
իւրմէ. զի զսրբութիւնն Տեառն պղծեաց,
եւ ջուր սրսկման ոչ սրսկեցաւ զնովաւ,
21 անսուրբ է։ Եւ եղիցի ձեզ այն օրէն յա-
ւիտենական, եւ որ սրսկէ զջուրն սրսկման
լուասցէ զձորձս իւր. եւ որ մերձենայցէ
ի ջուրն սրսկման, անսուրբ լիցի մինչեւ
22 ցերեկոյ։ Եւ յամենայն ինչ յոր մերձե-
նայցէ պղծեալն, անսուրբ լիցի [6]մինչեւ
ցերեկոյ", եւ անձն որ մերձենայցէ ի
նա, անսուրբ լիցի մինչեւ ցերեկոյ։

## ԳԼ. Ի

1 Եւ եկին որդիքն Իսրայելի ամենայն
ժողովրդեամբն յանապատն [7]Սինայի, յա-
ռաջնում ամսեանն. եւ բնակեցաւ ժո-
ղովուրդն ի Կադէս. եւ վախճանեցաւ
անդ Մարիամ, եւ անդ թաղեցաւ։
2 Եւ ոչ գոյր անդ ջուր ըմպելոյ ժո-
ղովրդեանն. եւ կուտեցան ի վերայ Մով-
3 սիսի եւ Ահարոնի։ Եւ բամբասեաց ժո-
ղովուրդն զՄովսէս եւ ասեն, Լաւ էր
թէ մեռեալ էաք ի կորստեան եղբարց
4 մերոց առաջի Տեառն. Եւ ընդէ՞ր ածէք
զժողովուրդս Տեառն յայս անապատ՝ կո-
5 տորել զմեզ եւ զանասուն մեր։ Եւ ըն-
դէ՞ր հանէք զմեզ յերկրէն Եգիպտացւոց՝
գալ ի տեղիս յայս չար, ի տեղի ուր ոչ
սերմն սերմանի, եւ ոչ [8]սեխենիք, եւ ոչ
այգիք, եւ ոչ նռնենիք. եւ ոչ ջուր գոյ
6 ըմպելոյ։ Եւ մտին Մովսէս եւ Ահարոն
յերեսաց ժողովրդեանն ի դուռն խորանին
վկայութեան, եւ անկան ի վերայ երե-
սաց իւրեանց. եւ երեւեցաւ փառքն
Տեառն ի վերայ նոցա։
7 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ա-
8 սէ, Առ դու զգաւազանն, եւ եկեղեցացո
զժողովուրդն դու եւ Ահարոն եղբայր
քո. եւ բարբառեսջիք ի վերայ վիմին
յանդիման նոցա, եւ տացէ զջուրս իւր.
եւ [9]հանջիք նոցա ջուր ի վիմէ անտի,
եւ [10]արբուսջիք ժողովրդեանն եւ անաս-
9 նոց նոցա։ Եւ առ Մովսէս զգաւազանն
[11]յանդիման Տեառն, որպէս հրամայեաց
10 նմա Տէր։ Եւ ժողովեցին Մովսէս եւ Ա-
հարոն զժողովուրդն հանդէպ վիմին, եւ
ասէ ցնոսա, Լուարուք ինձ, անհաւանք,
միթէ ի վիմէ՞ս յայսմանէ հանիցեմք ձեզ
11 ջուր։ Եւ ամբարձեալ Մովսիսի զձեռն
իւր՝ եհար զվէմն գաւազանաւն երկիցս
անգամ. եւ ել ջուր բազում, եւ արբ
ժողովուրդն եւ անասուն նոցա։
12 Եւ ասէ Տէր ցՄովսէս եւ ցԱհարոն,
Փոխանակ զի ոչ հաւատացէք դուք ինձ՝
սուրբ առնել զիս առաջի որդւոցն Իս-
րայելի, վասն այդորիկ ոչ տանիցիք դուք
զժողովուրդդ յերկիրն զոր ետու դոցա։
13 Այն է Ջուր [12]բամբասանաց. զի բամ-
բասեցին որդիքն Իսրայելի առաջի"
Տեառն, եւ սրբեցաւ ի նոսա։
14 Եւ առաքեաց Մովսէս հրեշտակս ի
Կադեսայ առ արքայն Եդովմայ եւ ասէ,
Այսպէս ասէ եղբայր քո Իսրայէլ, Դու
ինքնին գիտես զամենայն աշխատութիւնս
15 որ գտին զմեզ. Եւ որպէս իջին հարքն
մեր յԵգիպտոս, եւ պանդխտեցաք յԵ-
գիպտոս աւուրս բազումս. եւ չարչա-
րեցին զմեզ Եգիպտացիքն եւ զհարսն
16 մեր։ Եւ բողոքեցաք առ Տէր, եւ լուաւ
Տէր ձայնի մերում. եւ առաքեալ հրեշ-
տակ՝ եհան զմեզ յԵգիպտոսէ. եւ արդ
եմք մեք ի Կադէս քաղաքի, ի կողմն մի
17 սահմանաց քոց. Եւ արդ անցցուք ընդ
երկիր քո. եւ ոչ անցցուք ընդ անդս

[1] Տուն բանի՝ իմա վրան. այսպէս և է Եբրայ. [2] Եբր. վասն պղծելոյն ի մոխրոյ այրեցելոյն որ վասն մեղաց [3] Եբր. ջուր կենդանի [4] Եբր. սրբեսցէ զնա [5] Եբր. սուրբ լիցի յերեկոյին [6] Յեբր. պակասէ [7] Եբր. ի Սին

[8] Եբր. թզենիք [9] Եբր. հանցես [10] Եբր. արբուսցես [11] Եբր. յերեսաց [12] Եբր. Մերիբայ, այսինքն՝ հակառակութեան, որով հակառակեցան որդիքն Իսրայէլի ընդդէմ

¹քո, եւ ոչ ընդ այգիս ¹քո, եւ ոչ արբ-
ցուք ջուր ի ջրհորոց ¹քոց. ճանապարհ
արքունի գնասցուք, ոչ խոտորեսցուք
յաջ կամ յահեակ, մինչեւ անցցուք ըստ
18 սահմանս քո: Եւ ասէ ցնա Եդոմ, Մի՛
անցցես ընդ իս, ապա թէ ոչ՝ ²պատե-
19 րազմաւ ելից ընդդէմ քո: Եւ ասեն ցնա
որդիքն Իսրայելի, ³Առ լերամբք" անց-
ցուք. եւ եթէ արբցուք ի ջրոյ քումմէ
ես եւ խաշինք իմ, տացուք քեզ զգինս.
⁴արդ ոչինչ են իրքդ, անցցուք առ լե-
20 րամբք": Եւ նա ասէ, Ոչ անցցես ընդ
իս. եւ ել Եդոմ ընդդէմ նոցա ծանր ամ-
21 բոխիւ եւ հզօր ձեռամբ: Եւ ոչ կամեցաւ
Եդոմ տալ անց Իսրայելի ընդ սահմանս
իւր. եւ խոյս ետ Իսրայէլ ի նմանէ:
22 Եւ չուեցին ի Կադեսայ, եւ եկին որ-
դիքն Իսրայելի ամենայն ժողովրդեամբն
23 ի Հովր լեառն: Եւ խօսեցաւ Տէր ընդ
Մովսիսի եւ ընդ Ահարոնի ի Հովր լե-
րինն, ի սահմանս երկրին Եդովմայեցւոց,
24 եւ ասէ, Յաւելցի Ահարոն առ ժողովուրդ
իւր, զի մի՛ մտցէ յերկիրն զոր ետու
որդւոցն Իսրայելի. քանզի ⁵բարկացու-
ցէք զիս ի վերայ Ջուրցն բամբասանաց":
25 Առ դու զԱհարոն եւ զԵղիազար զորդի
նորա, եւ հան զնոսա ի Հովր լեառն
26 ¹յանդիման ամենայն ժողովրդեանն". Եւ
մերկացո յԱհարոնէ զպատմուճան նորա,
եւ զգեցուսցես Եղիազարու որդւոյ նո-
րա. եւ Ահարոն յաւելեալ մեռցի անդ:
27 Եւ արար Մովսէս որպէս եւ հրամայեաց
նմա Տէր. եւ ⁶եհան զնա" ի Հովր լեառն
28 առաջի ամենայն ժողովրդեանն: Եւ մեր-
կացոյց⁷ յԱհարոնէ զհանդերձս նորա,
եւ զգեցոյց զնոսա Եղիազարու որդւոյ
նորա. եւ մեռաւ Ահարոն ի գլուխ լե-
րինն. եւ իջին Մովսէս եւ Եղիազար ի
29 լեռնէ անտի: Եւ ետես ամենայն ժողո-
վուրդն թէ վախճանեցաւ Ահարոն, եւ
լացին զԱհարոն զերեսուն օր ամենայն
տունն Իսրայելի:

ԳԼ. ԻԱ.

1 Եւ լուաւ ⁸Քանանացին արքայն Արա-
դայ որ բնակեալ էր ⁹առ անապատաւն",
եթէ եկն Իսրայէլ զճանապարհն Աթա-
րիմայ, եւ ետ պատերազմ ընդ Իսրայելի,
2 եւ առ ի նոցանէ գերի: Եւ ուխտեաց
Իսրայէլ ուխտ Տեառն եւ ասէ, Եթէ
մատնեսցես ընդ ձեռամբ իմով զազգն
զայն, ¹⁰նզովեցից ¹զնա եւ" զքաղաքս
3 նորա: Եւ լուաւ Տէր ձայնի Իսրայելի,
եւ մատնեաց զՔանանացին ի ձեռս նորա.
եւ նզովեաց զնա եւ զքաղաքս նորա. եւ
կոչեաց զանուն տեղւոյն այնորիկ Նզովս:
4 Եւ չուեալ ի Հովր լեռնէ ընդ ճանա-
պարհ Կարմիր ծովուն՝ պատեցան զԵ-
դովմաւ. եւ ¹¹յողնեցաւ ժողովուրդն" ի
5 ճանապարհին: Եւ բամբասեաց ժողո-
վուրդն զԱստուած եւ զՄովսէս եւ ասեն,
Ընդէ՞ր հաներ զմեզ յԵգիպտոսէ կոտորել
զմեզ յանապատիս յայսմիկ. զի ոչ գոյ
հաց եւ ոչ ջուր. եւ անձինք մեր տաղտ-
6 կացեալ են ի նանիր հացէս: Եւ առա-
քեաց Տէր ի ժողովուրդն օձս ¹²կոտորիչս,
եւ հարկանէին զժողովուրդն. եւ մեռաւ
ժողովուրդ բազում յորդւոցն Իսրայելի:
7 Եւ եկին առ Մովսէս եւ ասեն, Մեղաք
զի խօսեցաք չար զՏեառնէ եւ զքէն.
արդ կաց յաղօթս առ Տէր, եւ բարձցէ
ի մէնջ զօձսդ. եւ եկաց Մովսէս յաղօթս
8 ¹առ Տէր" վասն ժողովրդեանն: Եւ ասէ
Տէր ցՄովսէս, Արա դու քեզ ¹³օձ, եւ
զիցես զնա ի վերայ նշանակի. եւ եղիցի
յորժամ հարկանիցէ օձ զմարդ, ամենայն
9 օձահար որ տեսանիցէ զնա՝ կեցցէ: Եւ
արար Մովսէս օձ պղնձի, եւ կացոյց
զնա ի վերայ նշանակին. եւ լինէր՝ յոր-
ժամ հարկանէր օձ զմարդ, հայէր ընդ
օձն պղնձի եւ կեայր:
10 Եւ չուեցին որդիքն Իսրայելի եւ եկին
11 բանակեցան յՈբովթ: Եւ չուեալ յՈբով-
թայ բանակեցան յԱքեգգայի յայնկոյս
անապատին որ է յանդիման Մովաբայ
12 յարեւելից կողմանէ: Անտի չուեցին եւ
բանակեցան ի ձորն Զարեդ:
13 Եւ անտի չուեալ բանակեցան յայն-
կոյս Առնովնայ յանապատին՝ առ ելիւք
սահմանացն Ամովրհացւոց. քանզի Առ-
նովն սահման է Մովաբացւոց, ընդ Մո-
14 վաբայն եւ ընդ Ամովրհային: Վասն
այնորիկ ասի ¹⁴ի գիրս, Պատերազմ Տեառն.
ԶԶովոբ հրձիգ արար եւ զձորն Առնով-

---

¹Եբր. դաշտս ²Եբր. սրով ³Եբր. Ընդ պողոտայն ⁴Եբր. ոչ այլ ինչ, անցից ոտիւք իմովք ⁵Եբր. հեստեցէք բանի իմում ի վերայ ջուրցն Մերիբայ (հակառակութեան) ⁶Եբր. ելին ⁷Եբրայեցին յաւելու, Մովսէս ⁸Կամ, Քանանիս ⁹Եբր. ի հարաւակողմն

¹⁰Կամ, աւերեցից, այսպէս և է Եբրայ. ¹¹Եբր. կարճամտեցաւ անձն ժողովրդեանն ¹²Եբր. կիզիչս ¹³Եբր. օձ կիզիչ ¹⁴Եբր. ի գիրս պատերազմաց Տեառն. Զվահեպ ի Սուփա, և զձորսն Առնովնայ, (15) Եւ հեղեղք ձորոց որ գնան ի բնակութիւնս Երայ, և հասանեն ի սահմանս Մովաբու

15նայ, Եւ հաստատեաց զձորսն բնակեալս
յէր, որ առընթեր կայ սահմանացն Մո-
վաբու՛՛:
16 Եւ անտի քան զնա Ջրհորն, այն է՝
ջրհորն զորմէ ասաց Տէր ցՄովսէս, Ժո-
ղովեա զժողովուրդն եւ տաց նոցա ջուր
17 ըմպելոյ: Յայնժամ օրհնեաց Իսրայէլ
զօրհնութիւնս [1]զայս ի վերայ ջրհորոյն.
18 Նուագեցէք նմա. Ջրհորն զոր իշխանք
փորեցին, եւ առչեցին զնա թագաւորք
ազգաց ի թագաւորութեան իւրեանց եւ
ի տիրել իւրեանց՛՛:
19 Եւ [2]ի ջրհորոյ անտի ի Մանթանին, եւ
ի Մանթանինայ ի Մանայէլ, եւ ի Մանա-
20 յելէ ի Բամովթ, Եւ [3]ի Բամովթայ յԱնա-
յէն, որ է ի դաշտին Մովաբայ, ի կատար
կոփածուին՛՛ որ հայի ընդ անապատն:
21 Եւ առաքեաց [4]Մովսէս հրեշտակս առ
արքայն Ամովրհացւոց բանիւք խաղա-
22 ղութեան եւ ասէ, Անցցուք ընդ երկիր
քո. զճանապարհայն գնասցուք,՛՛ ոչ խո-
տորեսցուք՝ ոչ յանդս եւ ոչ յայգիս, եւ
ոչ արբցուք ջուր ի ջրհորոց քոց. ճա-
նապարհ զարքունի գնասցուք մինչեւ
23 անցցուք ըստ սահմանս քո: Եւ ոչ ետ
Սեհոն անցանել Իսրայելի ընդ սահմանս
իւր. եւ ժողովեաց Սեհոն զամենայն
ժողովուրդն իւր, եւ ել տալ պատերազմ
ընդ Իսրայելի յանապատին. եւ եկն ի
Յասսա եւ ետ պատերազմ ընդ Իսրայելի:
24 Եւ եհար զնա Իսրայէլ կոտորմամբ սրոյ,
եւ տիրեցին երկրի նորա յԱռնովնայ մին-
չեւ ցՅաբովկ, մինչեւ ցորդիսն Ամոնայ.
զի [5]Յազեր է սահման՛՛ որդւոցն Ամո-
25նայ: Եւ առ Իսրայէլ զամենայն քա-
ղաքսն զայնոսիկ. եւ բնակեցաւ Իսրա-
յէլ յամենայն քաղաքս Ամովրհացւոց,
յԵսեբոն եւ յամենայն արուարձանս
26նորա. Քանզի Եսեբոն էր քաղաք Սե-
հոնի արքայի Ամովրհացւոց. եւ նա նախ
ետ պատերազմ ընդ արքային Մովաբու,
եւ առ զամենայն երկիրն [6]նորա յԱրո-
27 յերայ՛՛ մինչեւ ցԱռնոն: Վասն այնորիկ
ասեն ամենայն առակարկուք. Եկայք
յԵսեբոն. զի [7]շինեսցի, եւ հաստատես-
28 ցի՛՛ քաղաքն Սեհոնի. Զի հուր ել յԵ-
սեբոնայ եւ բոց ի քաղաքէն Սեհոնի,
եւ եկեր մինչեւ [8]ցՄովաբ, եւ կլանեաց
29 զարձանսն Առնովնայ: Վայ քեզ, Մո-
վաբ, կորեար. ժողովուրդ Քամովսայ,
մատնեցան ուստերք նոցա ի փախուստ,
եւ դստերք նոցա ի գերութիւն թագա-
30 ւորին [9]Ամովրհացւոց. Եւ զաւակ նոցա
սատակեսցի յԵսեբոնէ մինչեւ ցԴեբոն.
եւ կանայք նոցա բորբոքեցան հուր ի
վերայ Մովաբու՛՛:
31 Եւ բնակեաց Իսրայէլ [10]յամենայն քա-
32 ղաքս՛՛ Ամովրհացւոց: Եւ առաքեաց
Մովսէս լրտեսել զՅազեր. եւ առին զնա
եւ զաւանս նորա, եւ հանին զԱմովրհա-
ցին որ բնակեալ էր ի նմա:
33 Եւ կրկնեցան ելին ընդ ճանապարհն
ի Բասան. եւ ել Ովգ թագաւոր Բասա-
նու ընդդէմ նոցա, եւ ամենայն ժողո-
վուրդն նորա ի պատերազմ յԵդրային:
34 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Մի երկնչիր ի
նմանէ. զի ի ձեռս քո մատնեցի զնա
եւ զամենայն ժողովուրդն նորա, եւ
զամենայն երկիր նորա. եւ արասցես
ընդ նա որպէս արարեր ընդ Սեհոն ար-
քայ Ամովրհացւոց որ բնակեալ էր յԵսե-
35 բոն: Եւ եհար զնա եւ զորդիս նորա եւ
զամենայն ժողովուրդն նորա, մինչեւ
ամենեւին չմնալոյ ի նմանէն ապրեալ.
եւ ժառանգեցին զերկիրն նորա:

## Գլ. ԻԲ

1 Եւ չուեալ որդւոցն Իսրայելի բանա-
կեցան [11]յարեւմտից Մովաբու առ Յոր-
դանանու յանդիման Երիքովի:
2 Եւ տեսեալ Բաղակայ որդւոյ Սեպ-
փովրայ զամենայն զոր արար Իսրայէլ
3 ընդ Ամովրհացին, Երկեաւ Մովաբ յոյժ
ի ժողովրդենէ անտի, զի բազում էին.
եւ զանգիտեաց Մովաբ յերեսաց որդ-
4 ւոցն Իսրայելի: Եւ ասէ Մովաբ ցծերա-
կոյտն Մադիամու, Արդ լիզանէ ժողո-
վուրդս այս զամենայն որ շուրջ զմեւք
են, որպէս լիզանիցէ արջառ զդեղ դալար
ի դաշտի: Եւ Բաղակ որդի Սեպփովրայ
էր արքայ Մովաբու ի ժամանակին յայն-

[1] Եբր. զայս. Բղխեաց, ով ջրհոր. Նուագեցէք նմա. (18) Ջրհոր՝ զոր փորեցին իշխանք, փորեցին զնա մեծամեծք ազգին գաւազանաւ իւրեանց՝ հրամանաւ օրէնսդրին [2] Եբր. յանապատէ [3] Եբր. ի Բամովթայ ի հովիտն որ է ի դաշտին Մովաբայ, ի կատար Փասգայի [4] Եբր. Իսրայէլ հրեշտակս առ Սեհոն արքայ Ամովրհացւոց եւ ասէ, (22) Անցից ընդ երկիր քո. [5] Եբր. ամուր էին սահմանք [6] Եբր. ի ձեռաց նորա

[7] Եբր. շինեսցի եւ հաստատեսցի [8] Եբր. ցԱրն Մովաբու [9] Եբր. Ամովրհացւոց. Սեհոնի. (30) Հարաք զնոսա նետիւք. Եսեբոն կորեաւ մինչեւ ցԴեբոն, եւ աւերեցաք զնոսա մինչեւ ի Նոփա որ առ Մեդաբայ [10] Եբր. յերկրին [11] Եբր. յԱրաբովթ (ի դաշտս)

5 մեկ։ Եւ առաքեաց հրեշտակս առ Բա-
ղաամ որդի Բէովրայ՝ առ Փաթուրն, որ
էր առ գետովքն երկրին որդւոց ազ-
գին իւրոյ, կոչել զնա եւ ասել, Ահա
ազգ ել յԵգիպտոսէ, եւ ծածկեաց զե-
րեսս երկրի, եւ նստի սա մօտ առ իս.
6 Եւ արդ եկ անէծ դու ինձ զժողովուրդս
զայս. զի զօրագոյն քան զիս է սա.
թերեւս կարասցուք հարկանել ի սոցա-
նէ, եւ հանից զսա յերկրէ իմմէ. քան-
զի գիտեմ թէ զոր օրհնես դու՝ օրհնեալ
է, եւ զոր անիծանես՝ անիծեալ։
7 Եւ գնացին ծերակոյտն Մովաբու եւ
ծերակոյտն Մադիամու, եւ ըղձութիւնք
ի ձեռս նոցա. եկին առ Բաղաամ, եւ
ասացին նմա զպատգամսն Բաղակայ։
8 Եւ ասէ ցնոսա, Ագարուք աստ զայս
գիշեր, եւ տաց ձեզ պատասխանի
իրացդ իւիք զոր Տէր խօսեսցի ընդ իս.
եւ ագան իշխանքն Մովաբու առ Բա-
9 ղաամու։ Եւ եկն Աստուած առ Բաղաամ
եւ ասէ ցնա, Զի՞ են արքդ այդոքիկ առ
10 քեզ։ Եւ ասէ Բաղաամ ցԱստուած, Բա-
ղակ որդի Սեպփովրայ արքայ Մովաբու
11 առաքեաց զդոսա առ իս եւ ասէ, Ահա
ազգ ել յԵգիպտոսէ եւ ծածկեաց զերեսս
երկրի, [1]եւ նստի սա մօտ առ իս." արդ
եկ անէծ դու զսոսա ինձ, թերեւս կա-
րացից հարկանել զսա եւ հանից զսա
12 յերկրէ իմմէ։ Եւ ասէ Աստուած ցԲա-
ղաամ, Մի՛ երթար ընդ նոսա, եւ մի՛
անիծանիցես զժողովուրդն, քանզի օրհ-
13 նեալ է։ Եւ յարուցեալ Բաղաամ ընդ
առաւօտն, ասէ ցիշխանսն Բաղակայ,
Գնացէք անդրէն առ տէրն ձեր. զի ոչ
14 թողու զիս [2]Աստուած գալ ընդ ձեզ։ Եւ
յարուցեալ իշխանքն Մովաբու եկին առ
Բաղակ եւ ասեն, Ոչ կամեցաւ Բա-
ղաամ գալ ընդ մեզ։
15 Եւ յաւել առաքել Բաղակ իշխանս բա-
զումս եւ պատուականագոյնս քան զնո-
16 սա։ Եկին առ Բաղաամ եւ ասեն ցնա,
Այսպէս ասէ Բաղակ Սեպփովրեան, Ա-
ղաչեմ զքեզ, մի՛ դանդաղիցիս գալ առ
17 իս. Զի պատուելով պատուեցից զքեզ,
եւ զոր ինչ ասիցես արարից քեզ. եւ արդ
18 եկ անէծ ինձ զժողովուրդս զայս։ Պա-
տասխանի ետ Բաղաամ եւ ասէ ցիշխանսն
Բաղակայ, Եթէ տացէ ինձ Բաղակ լի
տամբ իւրով արծաթ եւ ոսկի, ոչ կա-
րացից անցանել զբանիւ Տեառն [3]Աստու-
ծոյ՝ առնել զնա փոքր կամ մեծ մտօք
19 իմովք"։ Եւ արդ այերուք [4]դուք աստ
զգիշերս զայս, եւ գիտացից զինչ յաւելցէ
20 Տէր խօսել ընդ իս։ Եւ եկն Աստուած
առ Բաղաամ ի գիշերին եւ ասէ ցնա,
Եթէ կոչել զքեզ եկեալ են արքդ այդո-
քիկ, արի երթ զկնի դոցա. բայց զբանն
զոր ես խօսեցայց ընդ քեզ՝ զայն արասցես։
21 Եւ յարուցեալ Բաղաամ ընդ առա-
ւօտն համետեաց զէշ իւր, եւ գնաց
22 ընդ իշխանսն Մովաբու։ Եւ բարկացաւ
սրտմտութեամբ Աստուած ընդ երթալն
նորա. եւ եկաց հրեշտակ [5]Աստուծոյ լի-
նել նմա բանսարկու. եւ նա հեծեալ էր
ի վերայ իշոյ իւրոյ, եւ երկու պատա-
23 նիք նորա ընդ նմա։ Եւ տեսեալ իշոյն
զհրեշտակ [6]Աստուծոյ զի կայր նմա ընկր-
ճեալ ի ճանապարհին, եւ սուսեր մերկ
ի ձեռին իւրում, խոտորեաց էշն ի ճանա-
պարհէն եւ երթայր ընդ դաշտն. եւ ե-
հար [7]զաւազանաւ զէշն ուղղել զնա ի
24 ճանապարհն։ Եւ եկաց հրեշտակն [6]Աս-
տուծոյ յառուածէջս այգեացն. եւ էր
25 ցանգ աստի եւ ցանգ անտի։ Եւ տեսեալ
իշոյն զհրեշտակն [6]Աստուծոյ՝ նեղեաց
զինքն ընդ որմն եւ ճմլեաց զոտն Բա-
ղաամու. եւ յաւել եւս հարկանել զնա։
26 Եւ յաւել հրեշտակն [6]Աստուծոյ երթալ
կալ ի նեղ տեղւոջ ուստի ոչ գոյր խոտո-
27 րել յաջ կամ յահեակ։ Եւ տեսեալ իշոյն
զհրեշտակն [6]Աստուծոյ, նստաւ ընդ Բա-
ղաամու. եւ բարկացաւ Բաղաամ, եւ
28 եհար զէշն գաւազանաւն։ Եւ եբաց
[2]Աստուած զբերան իշոյն, եւ ասէ ցԲա-
ղաամ, Զի՞նչ արարի քեզ զի հարեր զիս
29 այս երիցս անգամ։ Եւ ասէ Բաղաամ
ցէշն, Փոխանակ զի խաղ արարեր զիս,
եւ եթէ էր սուր ի ձեռին իմում, արդ
30 եւ խոցեալ էր իմ քեզ։ Եւ ասէ էշն
ցԲաղաամ, Ո՞չ ես այն էշ եմ քո յորում
հեծանէիր ի մանկութենէ քումմէ մին-
չեւ ցայսօր ժամանակի. միթէ յուլա-
նալով յուլացա՞յ ինչ երբեք առնել քեզ
31 այսպէս. եւ նա ասէ, Ոչ։ Եւ եբաց [2]Աս-
տուած զաչս Բաղաամու, եւ ետես
զհրեշտակն Տեառն ընկրճեալ նմա ի ճա-
նապարհին, եւ սուսեր մերկ ի ձեռին
իւրում. եւ անկեալ ի վերայ երեսաց

[1] Յեբր. պակասէ  [2] Եբր. Տէր

[3] Եբր. Աստուծոյ իմոյ առնել փոքր կամ մեծ
[4] Եբր. դուք եւս  [5] Եբր. Տեառն ի ճանապարհին
[6] Եբր. Տեառն  [7] Եբր. Բաղաամ

32 իւրոց երկիր եպագ նմա ։ Եւ ասէ ցնա
հրեշտակն [1]Աստուծոյ , Ընդէ՞ր հարեր
դու զէշդ այս երիցս անգամ. եւ ահա
ելի ես ի բանսարկութիւն քեզ. զի ոչ է
33 ճանապարհդ քո ուղիղ առաջի իմ. Եւ
տեսեալ զիս իշոյդ՝ խուսափեաց յինէն
այս երիցս անգամ. եւ եթէ չէր խու-
սափեալ յինէն , արդ իմ զքեզ սպանեալ
34 էր , եւ զդա ապրեցուցեալ ։ Եւ ասէ
Բաղաամ ցհրեշտակն Տեառն , Մեղայ ,
զի ոչ գիտէի թէ դու ինձ ընդդիմակաց կայ-
ցես ի ճանապարհիս. եւ արդ՝ եթէ չիցէ
35 քեզ հաճոյ , դարձայց անդրէն ։ Եւ ասէ
հրեշտակն [1]Աստուծոյ ցԲաղաամ , Երթ
դու ընդ արս ընդ այդոսիկ , բայց բա-
նի զոր ես ասացից քեզ , այնմ զգոյշ
լինիջիր խօսելոյ. եւ գնաց Բաղաամ
ընդ իշխանսն Բաղակայ ։
36 Եւ լուեալ Բաղակայ եթէ գայ Բա-
ղաամ , ել նմա ընդ առաջ ի քաղաքն
Մովաբու որ է ի սահմանս Առնոնայ յե-
37 զեր մերում սահմանացն ։ Եւ ասէ Բա-
ղակ ցԲաղաամ , Ո՞չ առաքեցի առ քեզ
կոչել զքեզ. ընդէ՞ր ոչ գայիր առ իս.
որպէս թէ ո՞չ էի արդեւք կարող պա-
38 տուել զքեզ ։ Եւ ասէ Բաղաամ ցԲա-
ղակ , Ահաւասիկ եկի առ քեզ. արդ
կարո՞ղ իցեմ խօսել բան ինչ , բայց ե-
թէ զոր արկանիցէ Աստուած ի բերան
39 իմ զայն խօսեցայց ։ Եւ գնաց Բաղաամ
ընդ Բաղակայ , եւ [2]եկն ի քաղաքս
40 հանգրուանացն՚՚ ։ Եւ եզեն Բաղակ ար-
ջառ եւ ոչխար , եւ առաքեաց Բաղաա-
մու եւ իշխանացն որ ընդ նմա էին ։
41 Եւ եղեւ այգ եղեւ , առեալ ընդ իւր
Բաղակայ զԲաղաամ եհան զնա [3]յբար-
ձանսն Բահաղու , եւ եցոյց նմա անտի
զմասն ինչ ժողովրդեանն ։

## ԳԼ. ԻԳ

1 Եւ ասէ Բաղաամ ցԲաղակ , Շինեա ինձ
աստ եւթն բագինս , եւ պատրաստեա ինձ
2 աստ եւթն զուարակ եւ եւթն խոյ ։ Եւ
արար Բաղակ որպէս եւ ասաց նմա Բա-
ղաամ , եւ եհան[4] զուարակ եւ խոյ ի բա-
3 գինն ։ Եւ ասէ Բաղաամ ցԲաղակ , Կաց
ի վերայ զոհից քո , եւ ես երթայց , թե-
րեւս յայտնեսցի ինձ [5]Աստուած ընդ ա-
ռաջ ելեալ. եւ բան զոր ցուցցէ ինձ՝
պատմեցից քեզ ։ [6]Եւ եկաց Բաղակ ի
վերայ զոհին իւրոյ. եւ գնաց Բաղաամ
հարցանել զԱստուած .՚՚ եւ երթայր [7]ուղ-
4 ղորդ ։ Եւ երեւեցաւ Աստուած Բաղաա-
մու. եւ ասէ ցնա Բաղաամ , Եւթն բագինս
պատրաստեցի , եւ հանի զուարակ եւ խոյ
5 ի բագինն մի ։ Եւ արկ [5]Աստուած բան
ի բերան Բաղաամու եւ ասէ , Դարձիր
6 առ Բաղակ , եւ այսպէս խօսեսցիս ։ Եւ
դարձաւ առ նա. եւ նա կայր ի վերայ
[8]ողջակիզացն իւրոց՚՚ , եւ ամենայն իշ-
7 խանքն Մովաբացւոց ընդ նմա ։ Եւ [6]ե-
ղեւ Հոգի Աստուծոյ ի վերայ նորա եւ՚՚
ամբարձեալ զառակս իւր ասէ , Ի Միջա-
գետաց կոչեաց զիս Բաղակ արքայ Մո-
վաբացւոց , ի լերանցն արեւելից , եւ
ասէ , Եկ նզովեա դու ինձ զՅակոբ , եւ
8 եկ անէծ ինձ զԻսրայէլ ։ Զի՞նչ նզովե-
ցից՝ զոր ոչ նզովէ Աստուած , կամ զի՞նչ
9 անիծից՝ զոր ոչ անիծանէ Տէր. Զի ի
լերանց տեսից զնա , եւ ի բլրոց [6]յառա-
ջագոյն հայեցայ ի նա. եւ ահա ժողո-
վուրդ միայնակեցէ առանձինն , եւ ընդ
10 ազգս մի՛ համարեսցի ։ [9]Ո՞ ճշգրտեաց
զզաւակն՚՚ Յակոբայ , եւ ո՞ համարեսցի
[10]զզօրութիւն Իսրայելի. մեռցի անձն իմ
[11]ընդ անձինս արդարոցն , եւ եղիցի զա-
ւակ իմ իբրեւ զզաւակ նոցա՚՚ ։
11 Եւ ասէ Բաղակ ցԲաղաամ , Զի՞նչ
գործեցեր ընդ իս. [12]յանիծանել թշնա-
մեաց՚՚ կոչեցի զքեզ , եւ դու օրհնեցեր
12 օրհնութիւն ։ Եւ ասէ Բաղաամ ցԲաղակ ,
Ո՞չ ապաքէն զինչ արկանիցէ [5]Աստուած
ի բերան իմ՝ զայն զգուշացայց խօսել ։
13 Եւ ասէ ցնա Բաղակ , Եկ դարձեալ
ընդ իս յայլ տեղի , ուստի [6]ոչ տեսա-
նիցես զնա , այլ զմասն ինչ ի նմանէ
տեսանիցես , եւ զամենեսեան ոչ տեսա-
14 նիցես. եւ անէծ ինձ զնա անտի ։ Եւ
առ գնաց զնա յագարակս դիտանոցին ,
ի կատար [13]կոփածոյին , եւ շինեաց անդ
եւթն բագինս , եւ եհան զուարակ եւ խոյ
15 ի բագինն ։ Եւ ասէ Բաղաամ ցԲաղակ ,
Կաց ի վերայ զոհից քո , եւ ես երթայց
16 [14]հարցանել զԱստուած՚՚ ։ Եւ ընդ առաջ
եղեւ [5]Աստուած Բաղաամու , եւ արկ
բան ի բերան նորա , եւ ասէ , Դարձիր

[1] Եբր. Տեառն  [2] Եբր. եկին ի Կարիաթ Հուսոթ  [3] Եբր. ի բարձունսն  [4] Եբր.—յեւսին յաւելու , Բաղակ եւ Բաղաամ  [5] Եբր. Տէր

[6] Յեբր. ղ—լ—ւ  [7] Եբր. ի բլուր մի  [8] Եբր. ող-ջակիզին իւրոյ  [9] Եբր. Ո՞ կարիցէ թուել զփո-շին  [10] Եբր. զչորրորդն  [11] Եբր. զմահ ար-դարոց. և եղիցի վախճան իմ իբրև զնոցայն  [12] Եբր. անիծանել զթշնամիս իմ  [13] Եբր. Փաս-գայի  [14] Եբր. ընդ առաջ անդր

անդրէն առ Բաղակ , եւ այսպէս խօսես-
17 ցիս ։ Եւ դարձաւ առ նա . եւ նա կայր
ի վերայ ողջակիզին իւրոյ , եւ ամենայն
իշխանքն Մովաբացւոց ընդ նմա . եւ
ասէ ցնա Բաղակ , Զի՞նչ խօսեցաւ Տէր ։
18 Եւ ամբարձեալ զառակս իւր ասէ , Արի
Բաղակ եւ լուր . ունկն դիր [1]վկայդ որ-
19 դիդ Սեպփովրայ ։ Ոչ իբրեւ զմարդ է
Աստուած [2]ի զարթնուլ , եւ ոչ իբրեւ
զորդի մարդոյ [3]ի սպառնալ . դու ասա-
ցեր թէ ոչ՚՚ արասցէ , [4]խօսեսցի եւ ոչ՚՚
20 կացուսցէ ։ Ահա՝ յօրհնել առեալ եմ .
21 [5]օրհնեցից եւ ոչ դարձուցից ։ Ոչ [6]լիցի
աշխատութիւն ի Յակոբ . եւ մի՛ երե-
ւեսցի վաստակ՚՚ ի մէջ Իսրայելի . Տէր
Աստուած նորա ընդ նմա . [7]փառաւո-
22 րութիւնք իշխանաց՚՚ ի նմա ։ Եւ Աս-
տուած որ եհան զնոսա յԵգիպտոսէ՝ իբ-
րեւ փառք միեղջերուի ի վերայ նորա ։
23 Զի ոչ գոն հմայք ի Յակոբ , եւ ոչ ըղ-
ձութիւնք ի մէջ Իսրայելի . ըստ ժա-
մանակի պատմեսցի Յակոբայ եւ Իսրա-
յելի , զի՛նչ [8]կատարելոց իցէ՚՚ Աստուած ։
24 Ահա ժողովուրդն իբրեւ զկորիւն առիւ-
ծու յարիցէ , իբրեւ զառեւծ նազեսցի .
եւ ոչ ննջիցէ , մինչեւ կերիցէ որս եւ
զարիւն վիրաւորաց արբցէ ։
25 Եւ ասէ Բաղակ ցԲաղաամ , Մի՛ անի-
ծանելով անիծաներ ինձ զնա , եւ մի՛ օրհ-
26 նելով օրհնեսցես զնա ։ Պատասխանի ետ
Բաղաամ եւ ասէ ցԲաղակ , Ո՞չ խօսեցայ
ընդ քեզ բանս եւ ասեմ , թէ Զոր ինչ
խօսեսցի ընդ իս [9]Աստուած՝ զայն արարից ։
27 Եւ ասէ Բաղակ ցԲաղաամ , Եկ տա-
րայց զքեզ յայլ տեղի , թերեւս հաճոյ
լիցի Աստուծոյ , եւ անիծանիցես ինձ
28 զնոսա անտի ։ Եւ տարաւ Բաղակ զԲա-
ղաամ ի կատարն Փոգովրայ որ [10]ձգի յա-
29 նապատն՚՚ ։ Եւ ասէ Բաղաամ ցԲաղակ ,
Շինեա ինձ աստ եւթն բագինս , եւ պատ-
րաստեա ինձ աստ եւթն զուարակ եւ
30 եւթն խոյ ։ Եւ արար Բաղակ որպէս եւ
ասաց նմա Բաղաամ , եւ եհան զուա-
րակ եւ խոյ ի բագինս ։

ԳԼ . ԻԴ

1 Եւ տեսեալ Բաղաամու թէ բարւոք
թուի առաջի Տեառն օրհնել զԻսրայէլ ,
ոչ չոգաւ ըստ սովորութեանն ընդ ա-
ռաջ հմայիցն , դարձոյց զերեսս իւր յա-
2 նապատն ։ Եւ ամբարձեալ Բաղաամու
զաչս իւր ետես զԻսրայէլ բանակեալ
ըստ ցեղից ցեղից . եւ եղեւ Հոգի Աս-
3 տուծոյ ի վերայ նորա . Եւ ամբարձեալ
զառակս իւր ասէ , Ասէ Բաղաամ որդի
4 Բէովրայ , ասէ այրն ճշմարտատես , [11]Որ
զտեսիլ Աստուծոյ՚՚ ետես ի քուն աչօք
5 լուրովք բացօք . Իբրեւ զի՛ գեղեցիկ են
[12]տունք քո , Յակոբ , եւ խորանք քո ,
6 Իսրայէլ . Իբրեւ [13]զանտառս հովանա-
ւորս՚՚ , եւ իբրեւ զբուրաստանս առ գե-
տովք , եւ իբրեւ [14]զխորանս զոր կանգ-
նեաց՚՚ Տէր , եւ իբրեւ զմայրս ի գնացս
7 ջուրց ։ [15]Եւ ելցէ այր ի զաւակէ նորա ,
եւ տիրեսցէ ազգաց բազմաց՚՚ . եւ բարձ-
րասցի քան [16]զԳովգայ թագաւորութիւն՚՚
նորա , եւ աճեսցէ թագաւորութիւն նո-
8 րա ։ Աստուած առաջնորդեաց նմա յԵ-
գիպտոսէ , իբրեւ փառք միեղջերուի ի
վերայ նորա . կերիցէ զազգս թշնամեաց
իւրոց , եւ [17]զպարարտութիւն նոցա ուղ-
ղածուծ արասցէ՚՚ . եւ նետիւք իւրովք
9 նետաձիգ լիցի ի թշնամիս ։ Եւ բազ-
մեալ հանգեաւ իբրեւ զառեւծ , եւ իբ-
րեւ զկորիւն առիւծու . եւ ո՞ յարուցա-
նիցէ զնա ։ Օրհնիչք քո օրհնեցին , եւ
անիծիչք քո անիծցին ։
10 Եւ բարկացաւ Բաղակ Բաղաամու ,
եւ ծափ զծափի հարկանէր . եւ ասէ Բա-
ղակ ցԲաղաամ , Անիծանել զթշնամիս
իմ կոչեցի զքեզ , եւ ահա օրհնելով օրհ-
11 նեցեր զնա այս երիցս անգամ ։ Եւ արդ
փախիր դու ի տեղի քո . ասացի պա-
տուել զքեզ , եւ վրիպեցոյց զքեզ Տէր
12 ի փառաց ։ Եւ ասէ Բաղաամ ցԲաղակ ,
Ո՞չ եւ ընդ հրեշտակսն քո զոր առա-
13 քեցեր առ իս՝ խօսեցայ եւ ասացի , Ե-
թէ տայցէ ինձ Բաղակ լի տամբ իւրով
արծաթ եւ ոսկի , ոչ կարիցեմ անցանել
զբանիւ Տեառն , առնել զայն չար կամ
բարի յանձնէ իմմէ . այլ զոր ինչ ասիցէ
14 [9]Աստուած՝ զայն խօսեցայց ։ Եւ արդ ահա
գնամ ի տեղի իմ . եկ տաց քեզ խրատ ,
թէ զի՛նչ առնելոց է ժողովուրդն այն

[1] Եբր. ինձ [2] Եբր. զի ստեսցէ [3] Եբր. թէ զղջասցի. ինքն ասաց , եւ ո՞չ [4] Եբր. խօսեցաւ եւ ո՞չ [5] Եբր. եւ օրհնեաց [6] Եբր. դիտեաց անիրաւութիւն ի Յակոբ եւ ոչ ետես յոռութիւն [7] Եբր. ցնծութիւնք թագաւորի [8] Եբր. գործեաց [9] Եբր. Տէր [10] Եբր. հայի յԵսիմոն

[11] Եբր. Ասէ որ լսուն զպատգամս Աստուծոյ, որ զտեսիլ Ամենակալին [12] Եբր. վրանք [13] Եբր. զհեղեղս տարածեալ են [14] Եբր. զհալուէս զոր տնկեաց [15] Եբր. Հոսեսցէ ջուր ի դուլից նորա , եւ սերմն նորա ի ջուրս բազումս [16] Եբր. զԱգագ՝ թագաւոր [17] Եբր. զոսկերս նոցա մանրեսցէ

ընդ ժողովուրդ քո ի վախճանի աւուրց ։
15 Եւ ամբարձեալ զառակս իւր ասէր , Ասէ
Բաղաամ որդի Բէովրայ , ասէ այրն
16 ճշմարտատես , Որ լսէ զպատգամս
Աստուծոյ , եւ հմուտ է գիտութեան
Բարձրելոյ , եւ զտեսիլ [1]Աստուծոյ ետես
17 ի քուն աչօք իւրովք բացօք . [2]Ցուցից
նմա , եւ ոչ այժմ . երանեցից", եւ ոչ
ի մօտոյ . ծագեսցէ Աստղն Յակոբայ , եւ
յարիցէ [3]այր յԻսրայելէ , եւ հարցէ զիշ-
խանս Մովաբայ , եւ առցէ աւար զա-
18 մենայն որդիս Սեթայ ։ Եւ եղիցի նմա
Եդովմ ժառանգութիւն [4]Եսաւայ թշնամ-
ւոյ իւրոյ". եւ Իսրայէլ արար զօրու-
19 թեամբ . Եւ յարիցէ այր ի Յակոբայ , եւ
կորուսցէ զապրեալսն ի քաղաքէ անտի ։
20 Եւ տեսեալ զԱմաղէկ , ամբարձեալ
զառակս իւր ասէ , Գլուխ ազգաց Ամա-
ղէկ , եւ [5]զաւակ նոցա կորիցէ"։
21 Եւ տեսեալ զԿինեցին , ամբարձեալ
զառակս իւր ասէ , Հզօր է բնակութիւն
քո , եւ [6]թէ դիցես ի քարանձաւս զբոյն
22 քո . [7]Եւ թէ լիցի ի Բէովր բոյն խար-
դախութեան քո , Ասորեստանեայք գե-
րեսցեն"։
23 Եւ ամբարձեալ զառակս իւր ասէ ,
Ո՞ ոք կեցցէ յորժամ դնիցէ զայն Ա-
24 տուած ։ Եւ [8]ելցէ ի ձեռաց Կիտացւոց ,
եւ չարչարեսցեն զԱսուր . եւ չարչարես-
ցեն [9]զԵբրայեցիս , եւ նոքեանք միան-
գամայն կորիցեն ։
25 Եւ յարուցեալ Բաղաամ դարձաւ
գնաց ի տեղի իւր , եւ Բաղակ գնաց
ընդ իւր կողմն ։

## ԳԼ. ԻԵ

1 Եւ բնակեցաւ Իսրայէլ ի Սատտիմ.
եւ պղծեցաւ ժողովուրդն պոռնկել ընդ
2 դստերսն Մովաբու ։ Եւ կոչեցին զնոսա
ի զոհս կռոց իւրեանց . եւ եկեր ժողո-
վուրդն ի զոհից նոցա , եւ երկիր պագին
3 կռոց նոցա ։ Եւ նուիրեցաւ Իսրայէլ
Բեելփեգովրայ , եւ բարկացաւ սրտմտու-
4 թեամբ Տէր ի վերայ Իսրայելի ։ Եւ ասէ
Տէր ցՄովսէս , Ա՛ռ զամենայն իշխանս
ժողովրդեանդ , եւ առակեա զդոսա առաջի
Տեառն յանդիման արեգական , եւ դարձ-
ցի սրտմտութիւն բարկութեան Տեառն
5 յԻսրայելէ ։ Եւ ասէ Մովսէս [10]ցցեղսն Իս-
րայելի , Կոտորեցէք իւրաքանչիւր զըն-
տանի իւր զնուիրեալ Բեելփեգովրայ ։
6 Եւ ահա այր Իսրայելացի գայր ածէր
[11]զեղբայր իւր առ կին Մադիանացի" յան-
դիման Մովսէսի եւ յանդիման ամենայն
ժողովրդեան որդւոցն Իսրայելի, եւ նոքա
լային առ դրան խորանին վկայութեան ։
7 Եւ տեսեալ Փենեէսի որդւոյ Եղիազա-
րու որդւոյ Ահարոնի քահանայի , յար-
եաւ ի միջոյ ժողովրդեանն , եւ առեալ
8 զեղարդն ի ձեռն իւր՝ Եւ եմուտ զհետ
առնն Իսրայելացւոյ ի [12]հնոցն, եւ խոց-
եաց զերկոսին՝ զայրն Իսրայելացի եւ
զկինն ընդ արգանդ իւր . եւ դադարեաց
9 հարուածն յորդւոցն Իսրայելի ։ Եւ եղեն
մեռեալքն ի հարուածոյն յայնցանէ քսան
եւ չորք հազարք ։
10 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ա-
11 սէ , Փենեէս , որդի Եղիազարու , որդւոյ
Ահարոնի քահանայի , ցածոյց զսրտմտու-
թիւն իմ յորդւոցն Իսրայելի , ի նախան-
ձեցուցանել ինձ զնախանձ իմ ի նոսա .
եւ ոչ սատակեցի զորդիսդ Իսրայելի նա-
12 խանձու իմով ։ Եւ արդ այսպէս ասա-
ցես , Ահա ես տաց նմա ուխտ խաղա-
13 ղութեան . Եւ եղիցի նմա եւ զաւակի
նորա յետ նորա ուխտ քահանայութեան
յաւիտենական, փոխանակ զի քինախնդիր
եղեւ Աստուծոյ իւրում , եւ քաւեաց
14 վասն որդւոցն Իսրայելի ։ Եւ անուն առն
Իսրայելացւոյ հարելոյ որ հարաւ ընդ
կնոջն Մադիանացւոյ՝ Զամբրի որդի Սա-
ղովմայ , իշխան տան ազգի որդւոցն
15 Շմաւոնի ։ Եւ անուն կնոջն Մադիա-
նացւոյ հարելոյ՝ Քազբի , դուստր Սու-
րայ իշխանի [6]ազգին Ամովթայ" տան
նահապետութեան Մադիանու ։
16 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ
17 ասէ , [6]Խօսեաց ընդ որդիսն Իսրայելի եւ
ասասցես ," Թշնամեցայք ընդ Մադիա-
18 նացիսն եւ հարկանիցէք զնոսա . Զի
թշնամի են նոքա ընդ ձեզ նենգու-
թեամբ , որ նենգեցին զձեզ Փոգորաւ ,
եւ Քազբեաւ դստերբ իշխանին Մադիա-
մու քեռբն իւրեանց հարելով յաւուրն
հարուածոց վասն Փոգովրայ ։

[1]Եբր. Ամենակալին [2]Եբր. Տեսից զնա , եւ ոչ այժմ. հայեցայց ի նա [3]Եբր. գաւազան [4]Եբր. եւ Սէիր ժառանգութիւն թշնամեաց իւրոց [5]Եբր. վախճան նորա մինչեւ ի կորուստ [6]Յեբր. [illegible] [7]Եբր. Զի եղիցի յաւեր Կինեցին, մինչեւ Ասորեստանեայք գերեսցեն զքեզ [8]Եբր. եկեսցեն նաւք [9]Եբր. զԷբեր

[10]Եբր. ցդատաւորսն [11]Եբր. կին Մադիանացի առ եղբարս իւր [12]Եբր. վրանն

## Գլ. ԻԶ

1 Եւ եղեւ յետ հարուածոցն, խօսեցաւ
Տէր ընդ Մովսէսի եւ ընդ [1]Եղիազարու
2 քահանայի եւ ասէ, Կալ զհամար ամե-
նայն ժողովրդեան որդւոցդ Իսրայելի ի
քսանամենից եւ ի վեր ըստ տանց նա-
հապետաց իւրեանց, ամենայն որ ելա-
3 նիցէ յԻսրայելէ տալ պատերազմ։ Եւ
խօսեցան Մովսէս եւ Եղիազար քահանայ
[2]յԱրաբովթ Մովաբու առ Յորդանանաւ
4 յանդիման Երիքովի, եւ ասեն, Ի քսա-
նամենից եւ ի վեր, որպէս հրաման ետ
Տէր Մովսէսի, [3]դու եւ որդիքդ Իսրայելի
ելեալքդ" յԵգիպտոսէ, կազմեցարուք։
5 Ռուբէն անդրանիկն Իսրայելի, եւ որ-
դիք Ռուբենի. Ենոք, եւ զունդն Ենո-
քայ. Փաղղուս, եւ զունդն Փաղղուսայ.
6 Ասրովմ, եւ զունդն Ասրովմայ. Քարմի,
7 եւ զունդն Քարմեայ։ Սոքա են զունդք
Ռուբենի. եւ եղեւ հանդէս նոցա քա-
ռասուն եւ երեք հազարք եւթն հարեւր
8 եւ երեսուն։ Եւ որդիք Փաղղուսայ Ե-
9 ղիաբ։ Եւ որդիք Եղիաբու՝ Նամուէլ եւ
Դաթան եւ Աբիրոն. սոքա էին անուա-
նիք ժողովրդեանն, եւ սոքա են՝ որ յար-
եան ի վերայ Մովսէսի եւ Ահարոնի ի ժո-
ղովրդեանն Կորխայ յարուցելոյ հակա-
10 ռակ Տեառն. Եւ բացեալ երկրի զբերան
իւր եկուլ զնոսա եւ զԿորխ մահուամբ
ժողովրդեանն իւրոյ, յորժամ եկեր հուր
զերկերիւր եւ զյիսուն. եւ եղեն ի
11 նշաւակ։ Եւ որդիքն Կորխայ ոչ մեռան։
12 Եւ որդիք Շմաւոնի, եւ զունդք որդ-
ւոցն Շմաւոնի. Նամուէլ, եւ զունդ մի
Նամուէլի. Յամին, եւ զունդ մի Յա-
մինայ. Յաքին, եւ զունդ մի Յաքինայ.
13 Զարա, եւ զունդ մի Զարայի. Սաւուղ,
14 եւ զունդ մի Սաւուղայ։ Այս են զունդք
Շմաւոնի ի հանդիսի իւրեանց, քսան եւ
երկու հազար եւ երկերիւր։
15 Եւ որդիք Գադայ՝ ըստ զնդից իւր-
եանց, Սափոն, եւ զունդ մի Սափոնայ.
Անգի, եւ զունդ մի Անգեայ. Սունի,
16 եւ զունդ մի Սունեայ. Ազենի, եւ
զունդ մի Ազենեայ. Ադդի, եւ զունդ
մի Ադդեայ. Արուադի, եւ զունդն Ա-
17 րուադեայ. Արիէլ, եւ զունդ մի Արիե-
18 լի։ Սոքա են զունդք որդւոցն Գադայ
ի հանդիսի իւրեանց, քառասուն [4]եւ
չորք" հազարք եւ հինգ հարեւր։
19 Եւ որդիք Յուդայ՝ Էր եւ Աւնան [4]եւ
Սեղովմ եւ Փարէս եւ Զարա". եւ մե-
ռան Էր եւ Աւնան յերկրին Քանանաց-
20 ւոց։ Եւ եղեն որդիք Յուդայի ըստ զնդից
իւրեանց. Սեղովմ, եւ զունդ մի Սե-
ղովմայ. Փարէս, եւ զունդ մի Փարե-
21 սի. Զարա, եւ զունդ մի Զարայի։ Եւ
եղեն որդիք Փարեսի. Ասրոմն, եւ զունդ
մի Ասրոմնի. Յամուէլ, եւ զունդ մի
22 Յամուելի։ Սոքա են զունդք Յուդայ
ըստ հանդիսի իւրեանց, եւթանասուն
եւ վեց հազար եւ հինգ հարեւր։
23 Եւ որդիք Իսաքարու՝ ըստ զնդից իւր-
եանց. Թովղայ, եւ զունդ մի Թովղայի.
Փուա, եւ զունդ մի Փուայի. Յասուբ,
24 եւ զունդ մի Յասուբայ. Սամրան, եւ
25 զունդ մի Սամրանայ։ Սոքա են զունդք
Իսաքարու ի հանդիսի իւրեանց, վաթ-
սուն եւ չորք հազարք եւ երեք հարեւր։
26 Եւ որդիք Զաբուղոնի՝ ըստ զնդից իւր-
եանց. Սարեդ, եւ զունդ մի Սարե-
դայ. Աղլոն, եւ զունդ մի Աղլոնի.
27 Աղէլ, եւ զունդ մի Աղելայ։ Սոքա են
զունդք Զաբուղոնի ի հանդիսէ իւրեանց,
վաթսուն հազար եւ հինգ հարեւր։
28 Եւ որդիք Յովսեփայ ըստ զնդից իւր-
29 եանց՝ Մանասէ եւ Եփրեմ։ Եւ որդիք
Մանասէի. Մաքիր, եւ զունդ մի Մա-
քիրայ. եւ Մաքիր ծնաւ զԳաղաադ.
Գաղաադ, եւ զունդ մի Գաղաադու։
30 Եւ որդիք Գաղաադու՝ Աքիեզեր, եւ
զունդ մի Աքիեզերայ. Քեղէգ, եւ զունդ
31 մի Քեղեգեայ. Եսրիէլ, եւ զունդ մի
Եսրիելի. Սիւքէմ, եւ զունդ մի Սիւ-
32 քեմայ. Սիմայի, եւ զունդ մի Սիմայ-
33 եայ. Ոփեր, եւ զունդ մի Ոփերայ։ Եւ
Սաղպաադայ որդւոյ Ոփերայ ոչ եղեն
ուստերք, այլ դստերք. եւ անուանք
դստերացն Սաղպաադայ՝ Մաադա եւ
Նուա եւ Էգղա եւ Մեղգա եւ Թերսա։
34 Այս զունդք Մանասէի ի հանդիսէ իւր-
եանց, յիսուն եւ երկու հազարք եւ
եւթն հարեւր։
35 Եւ այս են որդիք Եփրեմայ. [5]Սուտա-
ղա, եւ զունդ մի Սուտաղայի". Տա-
36 նաք, եւ զունդ մի Տանաքայ։ Սոքա
են որդիք Սուտաղայի. Եդեն, եւ զունդ

[1]Եբր. Եղիազարու որդւոյ Ահարոնի [2]Այսինքն ի դաշտս [3]Եբր. եւ որդւոցն Իսրայելի ելելոց

[4]Յեբր. պակաս [5]Եբր. ըստ զնդից իւրեանց. Սուտաղա, և զունդ մի Սուտաղայի. Բովքոր, եւ զունդ մի Բովքորայ

37 մի Եզենայ։ Այս գունդք Եփրեմայ ի
համարէ իւրեանց, երեսուն եւ երկու
հազարք եւ հինգ հարեւր։ Սոքա են
գունդք Յովսեփայ ըստ ցեղից իւրեանց։
38 Եւ որդիք Բենիամինի ըստ գնդից իւր-
եանց. Բաղէ, եւ գունդ մի Բաղեայ.
Ասիբեր եւ գունդ մի Ասիբերայ. Յաքի-
39 րան, եւ գունդ մի Յաքիրանայ. Սա-
40 փան, եւ գունդ մի Սափանայ[1]։ Եւ ե-
ղեն որդիք Բալեայ՝ Արեդ եւ Նոյե-
41 ման,[2] եւ գունդ մի Նոյեմանայ։ Այս
որդիք Բենիամինի, ըստ ցեղից իւրեանց
ի համարէ իւրեանց, [3]երեսուն եւ հինգ
հազար եւ [4]հինգ հարեւր։
42 Եւ որդիք Դանայ՝ ըստ գնդից իւր-
եանց. Սամի, եւ գունդ մի Սամեայ.
այս են գունդք Դանայ ըստ գնդից իւր-
43 եանց։ Ամենայն գունդք Սամեայ ըստ
համարի իւրեանց՝ վաթսուն եւ չորք
հազարք եւ [5]վեց հարեւր։
44 Եւ որդիքն Ասերայ՝ ըստ գնդից իւր-
եանց. Յամին, եւ գունդ մի Յամինայ.
Յեսու, եւ գունդն Յեսուայ. Բարիա,
45 եւ գունդ մի Բարիայի։ [6]Քոբէր, եւ
գունդ մի Քոբերայ. Մեղքիէլ, եւ գունդն
46 Մեղքիելի։ Եւ անուն դստերն Ասերայ՝
47 Սարա։ Սոքա են գունդք Ասերայ ի
համարէ իւրեանց, [7]Քառասուն եւ երեք
հազարք եւ [5]վեց հարեւր։
48 Եւ որդիք Նեփթաղիմայ՝ ըստ գնդից
իւրեանց. Ասէլ, եւ գունդ մի Ասեղայ.
49 Գաւնի, եւ գունդ մի Գաւնեայ. Յե-
սեր, եւ գունդ մի Յեսերայ. Սեղղեմ,
50 եւ գունդ մի Սեղղեմայ։ Այս գունդք
Նեփթաղիմայ ի համարէ իւրեանց, [8]քա-
ռասուն հազար եւ [5]երեք հարեւր։
51 Այս է համարս որդւոցն Իսրայելի,
վեց հարեւր հազար եւ հազար մի եւ
եւթն հարեւր եւ երեսուն։
52 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ա-
53 սէ, Դոցա բաժանեսցի երկիրն ժառան-
54 գել ըստ թուոյ անուանց։ Ըստ բազմաց՝
բազմացուսցես զժառանգութիւնն, եւ
ըստ սակաւուց՝ սակաւացուսցես զժա-
ռանգութիւնն իւրեանց. իւրաքանչիւր
որպէս եւ անցին ի համարս՝ տացի ժա-
55 ռանգութիւնն իւրեանց։ Վիճակօք ժա-

[1] Եբրայեցին յաւելու. Ոփիմ. եւ գունդ մի Ոփիմայ
[2] Եբրայեցին յաւելու, գունդ մի Արեդայ. Նոյեման
[3] Եբր. քառասուն [4] Եբր. վեց [5] Եբր. չորեք
[6] Եբր. Յորդւոցն Բարիայի Քոբեր [7] Եբր. յիսուն
[8] Եբր. քառասուն եւ հինգ

ռանգեսցի երկիրն, ըստ անուանց, ըստ
ցեղից նահապետաց իւրեանց ժառան-
56 գեսցեն։ Վիճակաւ բաժանեսցեն զժա-
ռանգութիւն նոցա ի մէջ բազմաց եւ
սակաւուց։
57 Եւ որդիքն Ղեւեայ ըստ գնդից իւր-
եանց. Գերսոն, եւ գունդ մի Գերսոնի.
Կահաթ, եւ գունդ մի Կահաթու. Մե-
58 րարի, եւ գունդ մի Մերարեայ։ Սոքա
են գունդք որդւոցն Ղեւեայ. գունդ մի
Ղոբենի, եւ գունդ մի Քեբրոնի[9], եւ
գունդ մի Կորխ, եւ գունդ մի Մուսի։
59 Եւ Կահաթ ծնաւ զԱմրամ։ Եւ անուն
կնոջ նորա Յովքաբեթ՝ դուստր Ղեւ-
եայ, որ ծնաւ զսոսա Ղեւեայ յԵգիպ-
տոս. եւ ծնաւ Ամրամայ զԱհարոն, եւ
զՄովսէս, եւ զՄարիամ քոյր նոցա։
60 Եւ ծնան Ահարոնի Նաբադ եւ Աբիուդ,
61 Եղիազար եւ Իթամար։ Եւ մեռան Նա-
բադ եւ Աբիուդ ի մատուցանել իւրեանց
զհուրն օտար առաջի Տեառն [10]յանա-
62 պատին Սինայի՝։ Եւ եղեն ի համարէն
իւրեանց քսան եւ երեք հազարք, ա-
մենայն արու յամսօրէից եւ ի վեր. քան-
զի ոչ անցին ի համարս ի մէջ որդւոցն
Իսրայելի, զի ոչ էր նոցա տուեալ վի-
ճակ ի մէջ որդւոցն Իսրայելի։
63 Եւ այս է համարս Մովսիսի եւ Եղիա-
զարու քահանայի, որ արարին համարս
որդւոցն Իսրայելի [11]յԱրաբովթ Մովաբու
առ Յորդանանու՝ յանդիման Երիքովի։
64 Եւ ընդ նոսա մի այր ոչ գոյր յանցելոցն
ի համարս ի Մովսիսէ եւ յԱհարոնէ որ
արարին համարս որդւոցն Իսրայելի յա-
65 նապատին Սինայի։ Քանզի ասաց զնո-
ցանէ Տէր թէ մահու մեռանիցին յանա-
պատին, եւ ոչ մնաց ի նոցանէ եւ ոչ
մի, բայց Քաղէբ որդի Յեփոնեայ, եւ
Յեսու որդի Նաւեայ։

ԳԼ. ԻԷ

1 Եւ մատեան դստերքն Սաղպաադու
որդւոյ Ոփերայ, որդւոյ Գաղաադու,
որդւոյ Մաքիրայ, ի գնդէն Մանասէի
որդւոյն Յովսեփայ. եւ այս են անուանք
նոցա. Մաաղա եւ Նուա եւ Էգղա եւ
2 Մեղքա եւ Թերսա. Կացին առաջի Մով-
սիսի եւ առաջի Եղիազարու քահանայի
եւ առաջի իշխանացն, եւ առաջի ա-
մենայն ժողովրդեան ի դրան խորանին

[9] Եբրայեցին յաւելու, եւ գունդ մի Մուշայ [10] Յեբր. պակասէ [11] Այսինքն ի դաշտս

3 վկայութեան, եւ ասեն, Հայր մեր մե-
ռաւ յանապատի անդ. եւ նա ոչ էր ի
մէջ ժողովրդեանն գումարելոց առաջի
Տեառն ի ժողովրդեանն Կորխայ, [1]որ
վասն մեղաց իւրոց մեռաւ. եւ որդիք
4 ոչ եղեն նորա։ [2]Եւ արդ մի՛" ջնջեսցի
անուն հօր մերոյ ի միջոյ ցեղի իւրոյ,
վասն զի ոչ գոյր նորա որդի. տուք մեզ
ժառանգութիւն ի մէջ եղբարց հօր մե-
5 րոյ։ Եւ մատոյց Մովսէս զպատասխան
6 նոցա առաջի Տեառն։ Եւ խօսեցաւ Տէր
7 ընդ Մովսիսի եւ ասէ, Ուղիղ խօսեցան
դստերքն Սաղպաադու. տալով տացես
նոցա կալուածս ժառանգութեան ի մէջ
եղբարց հօր իւրեանց, եւ գիցես զվիճակ
8 հօրն իւրեանց գնոքօք. Եւ ընդ որդւոն
Իսրայելի խօսեսցիս եւ ասասցես, Այր
ոք եթէ մեռանիցի, եւ ուստր ոչ գուցէ
նորա, տացէ զժառանգութիւն իւր դստեր
9 իւրում. Եւ եթէ ոչ գուցէ նորա դուստր,
տայցիք զժառանգութիւն նորա [3]եղբօր
10 իւրում". Եւ եթէ ոչ գուցեն նորա եղ-
բարք, տայցիք զժառանգութիւն նորա
11 [4]հօրեղբօր իւրում". Եւ եթէ ոչ գուցեն
եղբարք հօր նորա, տայցիք զժառան-
գութիւն ընտանւոյ մերձաւորի նորա.
ի ցեղէն նորա ժառանգեսցէ զնորայն.
եւ եղիցի այդ որդւոցն Իսրայելի իրա-
ւունք դատաստանի, որպէս հրաման ետ
Տէր Մովսիսի։

12 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ել դու [5]ի
լեառնն որ յայնկոյս է՝ ի լեառն ի Նա-
բաւ", եւ տես զերկիրն Քանանացւոց
զոր ես տամ որդւոցն Իսրայելի [6]ի կա-
13 լուած. Տեսցես զնա եւ յաւելցիս առ
ժողովուրդ քո եւ դու, որպէս յաւելաւ
Ահարոն եղբայր քո [6]ի Հովր լերինն".
14 Վասն զի անցէք զբանիւ իմով յանապա-
տին ի Սին ի հակառակել ժողովրդեանն
առ ի սուրբ առնելոյ զիս [6]եւ ոչ արա-
րէք զիս սուրբ" ի վերայ ջրոցն յանդի-
ման նոցա. այն է Ջուր հակառակու-
թեան[7] յանապատին ի Սին։

15 Եւ ասէ Մովսէս ցՏէր, (16) Տեսցէ
Տէր Աստուած հոգւոց ամենայն մարմնոյ
այր ի վերայ ժողովրդեանս այսորիկ,
17 Որ ելանիցէ առաջի սոցա, եւ որ հա-
նիցէ եւ մուծանիցէ զսոսա. եւ մի՛ լի-
նիցի ժողովուրդս Տեառն իբրեւ զոչ-
խարս որոց ոչ իցէ հովիւ։

18 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
ասէ, Առ դու քեզ զՅեսու որդի Նա-
ւեայ, զայր յորում զոյ Հոգի, եւ դիցես
19 զձեռս քո ի վերայ նորա. Եւ կացուսցես
զնա յանդիման Եղիազարու քահանայի
եւ [6]պատուիրեսցես նմա" յանդիման ա-
մենայն ժողովրդեանն, եւ պատուիրես-
20 ցես [8]վասն նորա" յանդիման նոցա. Եւ
տացես ի փառաց քոց ի վերայ նորա,
21 զի լուիցեն նմա որդիքն Իսրայելի։ Եւ
կացցէ առաջի Եղիազարու քահանայի,
եւ [9]հարցցեն ի նմանէ զիրաւունս յայտ-
նութեանց" առաջի Տեառն. ըստ բանի
բերանոյ նորա ելանիցեն, եւ ըստ բանի
բերանոյ նորա մտանիցեն, ինքն եւ որ-
դիքն Իսրայելի միաբան եւ ամենայն
22 ժողովուրդն։ Եւ արար Մովսէս որպէս
պատուիրեաց նմա Տէր. եւ առեալ զՅե-
սու կացոյց առաջի Եղիազարու [6]որդւոյ
Ահարոնի" քահանայի, եւ առաջի ամե-
23 նայն ժողովրդեանն։ Եւ եդ զձեռս իւր
ի վերայ նորա, եւ [10]արար զնա՝ յանձն՝
որպէս պատուիրեաց Տէր" Մովսիսի։

## ԳԼ. ԻԸ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ա-
2 սէ, Պատուիրեա որդւոցն Իսրայելի, եւ
ասասցես ցնոսա, [11]Զպատարագս իմ եւ
զպահամուռնս իմ եւ զընծայս իմ ի հոտ
անուշից՝ զգուշասջիք մատուցանել ի
3 տօնս իմ"։ Եւ ասասցես ցնոսա, Այս [12]են
ընծայք" զոր մատուցանիցէք Տեառն.
զառինս [13]երկուս անարատս համապազ"
4 յողջակէզ անպակաս. Զմի գառնն ա-
րասցես ընդ առաւօտս, եւ զերկրորդ
5 գառնն արասցես ընդ երեկոյս։ Եւ արաս-
ցես տասանորդ գրուի նաշիհ զանգեալ
6 իւղով մզելով՝ չորրորդաւ դորակի։ Ող-
ջակէզ անպակասութեան, որպէս լինէր ի
լերինն Սինայի, ի հոտ անուշից [14]Տեառն։
7 Եւ նուէր նորուն չորրորդ դորակին առ
մի գառն. ի սրբութեանն նուիրեսցես
8 զնուէրն ըմպելի Տեառն. Եւ զգառնն
երկրորդ արասցես ընդ երեկոյս. ըստ

[1]Եբր. զի [2]Եբր. Ընդէ՞ր [3]Եբր. եղբարց իւրոց [4]Եբր. Հօրեղբարց իւրոց [5]Եբր. ի լեառնդ յայդ յԱբարիմ [6]ՅԵբր. [illegible] [7]Եբր. [illegible], Կադեսի

[8]Եբր. նմա [9]Եբր. հարցցէ նմա ըստ իրաւանց Ուրիմայ [10]Եբր. պատուիրեաց նմա՝ որպէս խօսեցաւ Տէր ի ձեռն [11]Եբր. Զընծայն իմ, զհաց իմ, ի պատարագս իմ ի հոտ անուշից, զգուշասջիք մատուցանել ինձ ի ժամանակի իւրում [12]Եբր. է պատարագ [13]Եբր. երկուս տարեւորս անարատս, երկուս յաւուրն [14]Եբր. պատարագ Տեառն

[1]զոհին իւրում՚՚ եւ ըստ նուէրին իւ-
րում արասջիք ի հոտ անուշից Տեառն ։
9 Եւ յաւուրն շաբաթուց մատուսջիք
երկուս գառինս տարեւորս անարատս,
եւ երկուս տասանորդս նաշհոյ զանգելոյ
10 իւղով [2]ի զոհ ։ Եւ ողջակիզին շա-
բաթուց ի շաբաթս, ի վերայ հանապա-
զորդ ողջակիզին եւ [3]զնորուն նուէր՚՚ ։
11 Եւ յամսամտս մատուսջիք ողջա-
կէզս Տեառն՝ զուարակս երկուս յանդւոյ
եւ խոյ մի, գառինս տարեւորս անա-
12 րատս եւթն . Եւ երիս տասանորդս նաշ-
հոյ զանգելոյ իւղով առ զուարակ մի,
եւ երկուս տասանորդս նաշհոյ զանգեալ
13 իւղով առ խոյ մի, Եւ տասանորդ նաշ-
հոյ զանգեալ իւղով առ գառն մի, ի
14 հոտ անուշից ընծայ Տեառն ։ Եւ նուէր
նոցա կէս դորակին գինւոյ լիցի առ
զուարակ մի, եւ երրորդ դորակին լիցի
առ խոյ մի, եւ չորրորդ դորակին լիցի
առ գառն մի . այս ողջակէզք իցեն ա-
15 միս յամսոյ յամիսս տարւոյն ։ Եւ նոխազ
մի յայծեաց Տեառն վասն մեղաց [4]իւր-
եանց ի վերայ հանապազորդ ողջակիզին
առնիցի, եւ նուէրն նորա ։
16 Եւ յամսեանն առաջնում, ի չորեք-
տասաներորդում աւուր ամսեանն՝ զա-
17 տիկ Տեառն ։ Եւ ի հնգետասաներորդում
աւուր նորուն ամսոյ՝ տօն . զեւթն օր
18 բաղարջ կերիջիք ։ Եւ [5]օրն առաջին կո-
չեցեալ՚՚ սուրբ լիցի ձեզ, զամենայն գործ
19 սպասաւորութեան մի՛ գործիցէք ։ Եւ
մատուսջիք [6]ողջակէզս եւ ընծայս՚՚
Տեառն, զուարակս երկուս յանդւոյ եւ
խոյ մի, գառինս տարեւորս անարատս
20 եւթն . Եւ զոհ նոցա՝ նաշիհ զանգեալ
իւղով երիս տասանորդս առ զուարակ
մի, եւ երկուս տասանորդս առ խոյ մի .
21 Եւ տասանորդ տասանորդ արասցես առ
22 գառն մի եւթանեցունց գառանցն . Եւ
նոխազ մի յայծեաց վասն մեղաց, քա-
23 ւել վասն նոցա ։ Թող զհանապազորդ
առաւօտին ողջակէզն, որ է ողջակէզ
24 յաճախութեան ։ Զայս ըստ այսմ օրի-
նակի արասջիք աւուր աւուր՝ զեւթն
օր, [7]պատարագ ողջակէզ՚՚ ի հոտ անու-
շից Տեառն . ի վերայ հանապազորդ ող-
25 ջակիզին առնիցէք գնուէր նորին ։ Եւ

[1]Եբր. առաւօտեան զոհին [2]Եբր. եւ զնուէր
նորա [3]Եբր. նուէրի նորա [4]Յեբր. պոխոռե
[5]Եբր. յաւուրն առաջնում ժողով [6]Եբր. պա-
տարագ, ողջակէզ [7]Եբր. հաց պատարագի

[8]օրն եւթներորդ կոչեցեալ՚՚ սուրբ եղի-
ցի ձեզ . զամենայն գործ սպասաւորու-
թեան մի՛ գործիցէք ի նմա ։
26 Եւ յաւուրն նորեաց յորժամ մատու-
ցանիցէք [9]զոհ Տեառն զեւթներորդացն,
[10]կոչեցեալ սուրբ եղիցի ձեզ . զամենայն
գործ սպասաւորութեան մի՛ գործիցէք .
27 Եւ մատուսջիք ողջակէզս ի հոտ անու-
շից Տեառն՝ զուարակս երկուս յանդւոյ
եւ խոյ մի, գառինս տարեւորս ՙանա-
28 րատս եւթն . Եւ [11]զոհ նոցա նաշիհ զան-
գեալ իւղով՝ երեք տասանորդք առ զուա-
րակ մի եւ երկու տասանորդք առ խոյ
29 մի, Եւ տասանորդ տասանորդ առ գառն
30 մի՝ եւթանեցունց գառանցն . Եւ նոխազ
մի յայծեաց վասն մեղաց՝ քաւել վասն
31 ձեր ։ Թող զհանապազորդ ողջակէզն, եւ
[12]զզոհս նոցա զոր առնիցէք, եւ զնուէրս
նոցա . եւ անարատք լինիցին ձեզ՚՚ ։

ԳԼ . ԻԹ

1 Եւ յամսեանն եւթներորդի որ օր մի
իցէ ամսոյն, [10]կոչեցեալ սուրբ եղիցի
ձեզ . զամենայն գործ սպասաւորութեան
մի՛ գործիցէք. օր [13]նշանակելոյ եղիցի
2 ձեզ ։ Եւ արասջիք ողջակէզս ի հոտ ա-
նուշից Տեառն, զուարակ մի յանդւոյ,
խոյ մի, գառինս տարեւորս անարատս
3 եւթն, Եւ [11]զոհ նոցա նաշիհ զանգեալ
իւղով, երիս տասանորդս առ զուարակ
մի, եւ երկուս տասանորդս առ խոյ մի,
4 Եւ տասանորդ տասանորդ առ գառն մի
5 եւթանեցունց գառանցն . Եւ նոխազ մի
յայծեաց վասն մեղաց՝ քաւել վասն ձեր ։
6 Թող զողջակէզն ամսամտին, եւ [14]զոհք
նոցա եւ նուէրք իւրեանց՚՚ ըստ օրայ-
մանի իւրեանց ի հոտ անուշից [15]Տեառն ։
7 Եւ ի տասներորդի [16]նորին ամսոյ՝ կո-
չեցեալ՚՚ սուրբ եղիցի ձեզ . եւ լլկեսջիք
զանձինս ձեր . զամենայն գործ սպա-
8 սաւորութեան մի՛ գործիցէք ։ Մատուս-
ջիք ողջակէզս ի հոտ անուշից ՙընծայս
Տեառն, զուարակ մի յանդւոյ, խոյ մի,
գառինս տարեւորս անարատս եւթն .

[8]Եբր. յաւուրն եւթներորդի ժողով [9]Եբր. ըն-
ծայ հացի նոր [10]Եբր. ժողով [11]Եբր. ըն-
ծայ հացի [12]Եբր. զընծայ հացի նորա, մա-
տուսջիք (անարատք լինիցին ձեզ) եւ զնուէր
նոցա [13]Եբր. հորկաներոյ փող [14]Եբր.
զընծայ հացի նորա, եւ զողջակէզն հանապազորդ
եւ զընծայ հացի նորա, եւ զնուէրս նոցա [15]Եբր.
պատարագ Տեառն [16]Եբր. ամսոյն այնորիկ
եւթներորդի ժողով

9 Եւ [1]զոհ նոցա նաշիհ զանգեալ իւղով,
երիս տասանորդս առ զուարակ մի, եւ
10 երկուս տասանորդս առ խոյ մի, Եւ
տասանորդ տասանորդ առ գառն մի,
11 եւթանեցունց գառանցն. Եւ նոխազ մի
յայծեաց վասն մեղաց՝ [2]քաւել վասն ձեր".
Թող զվասն մեղացն քաւութեան, եւ
[3]զողջակէզսն հանապազորդս եւ զզոհս
նորա, եւ զնուէր նորին ըստ պայմանի
իւրում ի հոտ անուշից ընծայ Տեառն":
12 Եւ յաւուրն հնգետասաներորդի նորին
եւթներորդի ամսոյ՝ [4]կոչեցեալ սուրբ
եղիցի ձեզ. զամենայն գործ սպասաւո-
րութեան մի՛ գործիցէք, եւ տօնեսջիք
13 [2]զնա տօն Տեառն զեւթն օր. Եւ մա-
տուսջիք [5]ողջակէզս ընծայս" ի հոտ ա-
նուշից Տեառն, [2]յաւուրն առաջնում"
զուարակս յանդւոյ երեքտասան, խոյս
երկուս, գառինս տարեւորս չորեքտա-
14 սան, անարատք լինիցին. Եւ [1]զոհք նո-
ցա նաշիհ զանգեալ իւղով, երիս տա-
սանորդս առ զուարակ մի՝ երեքտասա-
նեցունց զուարակացն. եւ երկուս տա-
սանորդս առ խոյ մի՝ երկոցունց խոյոցն,
15 Եւ տասանորդ տասանորդ առ մի մի
գառն՝ չորեքտասանեցունց գառանցն.
16 Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց.
Թող զհանապազորդ [6]ողջակէզս եւ զզոհս
եւ զնուէրս նոցա":
17 Եւ յաւուրն երկրորդի՝ զուարակս եր-
կոտասան, խոյս երկուս, գառինս տա-
18 րեւորս անարատս չորեքտասան. Եւ
[7]զոհք նոցա եւ նուէրք" զուարակացն
եւ խոյոցն եւ գառանցն՝ ըստ թուոյ
19 նոցա եւ ըստ պայմանի իւրեանց. Եւ
նոխազ մի յայծեաց վասն մեղաց. Թող
զհանապազորդ ողջակէզն եւ [8]զզոհս նո-
ցա" եւ զնուէրս իւրեանց։
20 Եւ յաւուրն երրորդի՝ զուարակս մե-
տասան եւ խոյս երկուս, գառինս տա-
21 րեւորս անարատս չորեքտասան. Եւ
[7]զոհ նոցա եւ նուէր" զուարակացն եւ
22 խոյոցն եւ գառանց՝ ըստ թուոյ նոցա[9]. Եւ
քօշ մի յայծեաց վասն մեղաց. Թող զհա-
նապազորդ [6]ողջակէզս նոցա եւ զնուէրս
իւրեանց":

[1]Եբր. ընծայ հացի [2]Յեբր. պակասէ [3]Եբր. զողջակէզն հանապազորդ եւ զընծայ հացի նորա և զնուէրս նոցա [4]Եբր. ժողով [5]Եբր. ողջակէզ, պատարագ [6]Եբր. ողջակէզն եւ զընծայ հացի նորա եւ զնուէր նորա [7]Եբր. ընծայ հացի նոցա եւ նուէրք նոցա վասն [8]Եբր. զընծայ հացի նորա [9]Եբրայեցին յաւելու, ըստ օրինի

23 Եւ յաւուրն չորրորդի՝ զուարակս
տասն, խոյս երկուս, գառինս տարե-
24 ւորս անարատս չորեքտասան, Եւ [7]զոհք
նոցա եւ նուէրք" զուարակացն եւ խո-
յոցն եւ գառանց՝ ըստ թուոյ նոցա եւ
25 ըստ պայմանի իւրեանց. Եւ նոխազ մի
յայծեաց վասն մեղաց. Թող զհանա-
պազորդ [6]ողջակէզսն եւ զզոհս նոցա եւ
զնուէրս իւրեանց".
26 Եւ յաւուրն հինգերորդի՝ զուարակս
ինն, խոյս երկուս, որոջս տարեւորս
27 անարատս չորեքտասան. Եւ [7]զոհք նոցա
եւ նուէրք" զուարակացն եւ խոյոց եւ
գառանց՝ ըստ թուոյ նոցա եւ ըստ պայ-
28 մանի [2]իւրեանց. Եւ նոխազ մի յայծեաց
վասն մեղաց. Թող զհանապազորդ [6]ող-
ջակէզսն եւ զզոհս նոցա եւ զնուէրս
իւրեանց":
29 Եւ յաւուրն վեցերորդի՝ զուարակս
ութ, խոյս երկուս, գառինս տարեւորս
30 անարատս չորեքտասան. Եւ [7]զոհք նո-
ցա եւ նուէրք" զուարակացն եւ խոյոց
եւ գառանց՝ ըստ թուոյ նոցա եւ ըստ
31 պայմանի [2]իւրեանց. Եւ նոխազ մի յայ-
ծեաց վասն մեղաց. Թող զհանապազորդ
[6]ողջակէզսն եւ զզոհս նոցա եւ զնուէրս
իւրեանց":
32 Եւ յաւուրն եւթներորդի՝ զուարակս
եւթն, խոյս երկուս, գառինս տարե-
33 ւորս անարատս չորեքտասան. Եւ [7]զոհք
նոցա եւ նուէրք" զուարակացն եւ խո-
յոց եւ գառանց՝ ըստ թուոյ նոցա եւ
34 ըստ պայմանի իւրեանց. Եւ նոխազ մի
յայծեաց վասն մեղաց. Թող զհանապա-
զորդ [6]ողջակէզսն եւ զզոհս նոցա եւ
զնուէրս իւրեանց":
35 Եւ յաւուրն ութերորդի՝ [10]ելք լիցին
ձեզ. զամենայն գործ սպասաւորութեան
36 մի՛ գործիցէք ի նմա։ Եւ մատուսջիք [11]ող-
ջակէզս ի հոտ անուշից ընծայս" Տեառն
զուարակ մի, խոյ մի, գառինս տարեւորս
37 անարատս եւթն. Եւ [7]զոհք նոցա եւ
նուէրք" զուարակին եւ խոյի եւ գառանց՝
ըստ թուոյ նոցա եւ ըստ պայմանի [2]իւր-
38 եանց. Եւ նոխազ մի յայծեաց վասն
մեղաց. Թող զհանապազորդ [6]ողջակէզսն
եւ զզոհս նոցա եւ զնուէրս իւրեանց":
39 Զայս առնիցէք ի տօնս ձեր Տեառն.
Թող զուխտս ձեր եւ զողջակէզսն ձեր եւ

[10]Եբր. տօնք [11]Եբր. ողջակէզ, պատարագ ի հոտ անուշից

զկամայականս ձեր և [1]զզոհս ձեր և
զնուէրս ձեր և [2]զփրկութիւնս ձեր։
40 Եւ խօսեցաւ Մովսէս ընդ որդիսն Իսրա-
յէլի՝ [3]որպէս պատուիրեաց Տէր Մովսիսի։

## ԳԼ. Լ.

1 Եւ խօսեցաւ Մովսէս ընդ իշխանս որդ-
ւոցն Իսրայէլի և ասէ, Այս բան է զոր
2 հրամայեաց Տէր. Այր ոք այր՝ եթէ ուխ-
տիցէ ուխտ Տեառն, կամ երդնուցու
[4]երդումն սահմանաւ, կամ սահմանիցէ՝՝
ինչ վասն անձին իւրոյ, մի՛ արասցէ ա-
պական զբան իւր. այլ զամենայն ինչ
որ ելանիցէ ի բերանոյ իւրմէ՝ արասցէ։
3 Եւ եթէ կին ոք ուխտիցէ ուխտ Տեառն,
կամ սահմանիցէ սահման ինչ ի տան
4 հօր իւրոյ ի մանկութեան իւրում. Եւ
լուիցէ հայր նորա զուխտ նորա և զսահ-
մանս նորա զոր սահմանեաց զանձնէ
իւրմէ, և լռեսցէ նմա հայր նորա, կաց-
ցեն ամենայն ուխտք նորա, և ամենայն
սահմանքն զոր սահմանեաց զանձնէ իւր-
5 մէ՝ հաստատեսցին նմա։ Եւ եթէ ոչ առ-
նուցու յանձն հայր նորա յաւուր յորում
լուիցէ զամենայն ուխտս նորա, և զսահ-
մանսն զոր սահմանեաց զանձնէ իւրմէ,
մի՛ կացցեն. և Տէր անպարտ արասցէ
զնա. զի ոչ առ յանձն հայր նորա։
6 Ապա թէ լինելով լինիցի առն, և
ուխտք իւր ի նմա իցեն ըստ ուխտից
շրթանց իւրոց զոր սահմանեաց զանձնէ
7 իւրմէ, Եւ լուիցէ այրն նորա և լռիցէ
նմա յաւուր յորում լուիցէ, այնպէս կաց-
ցեն ամենայն ուխտք նորա, և սահ-
մանքն նորա զոր սահմանեաց զանձնէ
8 իւրմէ՝ հաստատեսցին։ Ապա թէ ոչ առ-
նուցու յանձն այր նորա յաւուր յորում
լուիցէն, ամենայն ուխտքն նորա և
ամենայն սահմանքն զոր սահմանեաց
զանձնէ իւրմէ՝ մի՛ հաստատեսցին. զի
այրն ոչ առ յանձն. և Տէր անպարտ
արասցէ զնա։
9 Եւ ուխտք այրւոյ կամ հանելոյ, զոր
ուխտիցէ զանձնէ իւրմէ՝ հաստատեսցին
10 նմա։ Ապա թէ ի տան առն իւրոյ իցեն
ուխտք նորա, կամ սահմանն զոր սահ-
11 մանիցէ երդմամբ զանձնէ իւրմէ, Եւ
լուիցէ այր նորա և լռիցէ նմա, և ոչ առ-
նուցու նմա յանձն, կացցեն ամենայն
ուխտք նորա, և ամենայն սահմանք
նորա զոր սահմանեաց զանձնէ իւրմէ՝
12 հաստատեսցին նմա։ Եւ եթէ խափա-
նելով խափանեսցէ այրն նորա յորում
աւուր լուիցէ զամենայն ինչ որ ելանիցէ
ի շրթանց նորա ըստ ուխտից նորա և
ըստ սահմանացն նորա զանձնէ իւրմէ,
մի՛ հաստատեսցի նմա. զի այր նորա
զանցոյց, և Տէր անպարտ արասցէ զնա։
13 Զամենայն ուխտ և զամենայն երդումն
կապոյ առ լլկելոյ զանձն, այր նորա
հաստատեսցէ նմա, և այր նորա զան-
14 ցուսցէ։ Եւ եթէ լռելով լռեսցէ նմա օր
ըստ օրէ, հաստատեսցէ նմա զամենայն
ուխտսն իւր, և զսահմանսն կացուսցէ
նմա. վասն զի լռեաց նմա յաւուրն յո-
15 րում լուաւ։ Եւ եթէ զանցուցանելով
զանցուսցէ այր նորա յետ աւուրն յո-
րում լուաւ, ընկալցի զմեղս իւր։
16 Այս իրաւունք են զոր պատուիրեաց
Տէր Մովսիսի ընդ այր և ընդ կին իւր,
ընդ հայր և ընդ դուստր իւր՝ ի ման-
կութեանն ի տան հօր իւրոյ։

## ԳԼ. ԼԱ.

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի և ա-
2 սէ, Ա՛ռ զվրէժ որդւոցդ Իսրայէլի ի Մա-
դիանացւոց անտի. և ապա յաւելցիս
3 ի ժողովուրդ քո։ Եւ խօսեցաւ Մովսէս
ընդ ժողովրդեանն և ասէ, Վառեցէք
ի ձէնջ արս՝ ճակատել [5]առաջի Տեառն՝՝
ի վերայ Մադիամու, հատուցանել զվրէժ
4 ի Տեառնէ Մադիամու։ Հազար այր ի ցե-
ղէ յամենայն ցեղիցն Իսրայէլի առաքե-
5 ցէք առ պատերազմ։ Եւ համարեցան
ի հազարաւորացն Իսրայէլի հազար այր
ի ցեղէ, երկոտասան հազար վառեալ ի
6 պատերազմ։ Եւ արձակեաց զնոսա Մով-
սէս, հազար այր ի ցեղէ հանդերձ զօրու
իւրեանց, և զՓենեէս որդի Եղիազա-
րու [5]որդւոյ Ահարոնի՝՝ քահանայի. և
զսպասն սրբութեան և փողքն ազդե-
7 ցութեան ի ձեռս [6]նոցա։ Եւ ճակատե-
ցան ընդդէմ Մադիանացւոցն, որպէս և
հրամայեաց Տէր Մովսիսի. և կոտորե-
8 ցին զամենայն արու. Եւ զթագաւորսն
Մադիանացւոց կոտորեցին հանդերձ վի-
րաւորօք նոցա, և զԵւին և զՍուր և
զՌոկոմ և զՈւր և զՌոբոք, զհինգ
թագաւորս Մադիամու. և զԲաղաամ

[1]Եբր. զհացի ընծայ [2]Եբր. զխաղաղականս [3]Եբր. ըստ ամենայնի որպէս [4]Եբր. երդումն, սահ. մանաւ սահմանել

[5-5]Եբր. պակասէ [6]Եբր. նորա

որդի Բէովրայ սպանին սրով, [1]հանդերձ
9 վիրաւորօք նոցա՛՛։ Եւ զկանայս Մա-
դիամու եւ զաղխն նոցա եւ զանասուն
նոցա եւ զամենայն ստացուածս նոցա
10 եւ զզօրս նոցա [2]աւին յաւարի։ Եւ զա-
մենայն քաղաքս նոցա [3]տամբք իւրեանց
11 եւ զաւանս նոցա հրձիգ արարին։ Եւ
առին զամենայն զաւար նոցա եւ զամե-
նայն կապուտ նոցա ի մարդոյ մինչեւ
12 յանասուն։ Եւ ածին առ Մովսէս եւ առ
Եղիազար քահանայ եւ առ ամենայն
որդիսն Իսրայէլի զգերին եւ զկապուտ
եւ զաւար [4]բանակին յԱրաբովթ Մո-
վաբ՛՛, որ է յանդիման Երիքովի առ ե-
զերբ Յորդանանու։
13 Եւ ելին Մովսէս եւ Եղիազար քահա-
նայ եւ ամենայն իշխանք ժողովրդեանն
ընդ առաջ նոցա արտաքոյ բանակին։
14 Եւ բարկացաւ Մովսէս ի վերայ ստի-
կանաց զօրուն, հազարապետաց եւ հա-
րիւրապետաց եկելոց ի ճակատէ պատե-
15 րազմին. Եւ ասէ ցնոսա Մովսէս. [5]Ընդէ՞ր
16 ապրեցուցէք՛՛ զամենայն էգ, Զի նոքա
էին որդւոցն Իսրայէլի ըստ բանիցն Բա-
ղաամու, առ ի վրիպեցուցանելոյ եւ ար-
համարհելոյ զբան Տեառն վասն Փոգով-
րայ, եւ եղեւ հարուած ի ժողովրդեանն
17 Տեառն։ Եւ արդ կոտորեցէք զամենայն
արու յամենայն [6]աղխից, եւ զամենայն
կին որոյ գիտացեալ է զարութիւն արուի՝
18 կոտորեցէք։ Եւ զամենայն զաղխ կա-
նանց որ ոչ իցէ գիտացեալ զարութիւն
19 արուի՝ ապրեցուցէք։ Եւ դուք բնա-
կեցարուք արտաքոյ բանակին զեւթն
օր. ամենայնի որոյ սպանեալ իցէ եւ
մերձեալ ի [7]վիրաւոր՝ սրբեսցի յաւուրն
երրորդի եւ յաւուրն եւթներորդի, դուք
20 եւ գերիդ ձեր։ Եւ զամենայն հանդերձ
եւ զամենայն անօթ մաշկեղէն եւ զամե-
նայն գործ մազագործ եւ զամենայն կահ
փայտակերտ սրբեսջիք։
21 Եւ ասէ Եղիազար քահանայ ցարս զօ-
րուն եկելոց ի ճակատէ պատերազմին,
Այս իրաւունք օրինի են զոր հրամայեաց
22 Տէր Մովսիսի։ [8]Բաց յոսկւոյ եւ յարծա-
թոյ եւ ի պղնձոյ եւ յերկաթոյ եւ ի կա-
23 պարոյ եւ յանագէ, Ամենայն որ անցա-
նէ՛՛ ընդ հուր՝ եւ սրբեսցի, այլ եւ ջրովն
սրսկման սրբեսցի. եւ ամենայն որ ոչ
անցանիցէ ընդ հուր՝ լուանայցի ջրով։
24 Լուասջիք զհանդերձս յաւուրն եւթնե-
րորդի, եւ սուրբք լինիջիք, եւ ապա
մտանիցէք ի բանակն։
25 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ
26 ասէ, Առ զհամար աւարի գերութեանդ
ի մարդոյ մինչեւ յանասուն, դու եւ Ե-
ղիազար քահանայ, եւ իշխանք նահա-
27 պետաց ժողովրդեանդ. Եւ բաժանեցէք
զաւարդ ի մէջ պատերազմողացդ ելելոցդ
ի պատերազմ, եւ ի մէջ ամենայն ժո-
28 ղովրդեանդ։ Եւ առջիք հաս Տեառն յա-
մենայն արանց պատերազմողաց ելթե-
լոց ի պատերազմ, ոգի մի ի հինգ հարիւ-
րոց՝ ի մարդոյ եւ [9]յանասնոյ եւ յարջա-
29 ռոյ եւ յոչխարէ եւ յայծեաց։ Եւ զկէս՛՛
նոցա առնուցուս, եւ տացես Եղիազա-
30 րու քահանայի զպտուղսն Տեառն։ Եւ
ի կիսոյ որդւոցն Իսրայէլի առցես մի ի
յիսնէ, ի մարդոյ եւ [1]յանասնոյ, յարջա-
ռոյ եւ յոչխարէ եւ յիշոյ եւ յամենայն
անասնոյ, եւ տացես զայն Ղեւտացւոցն
որ պահեն զպահպանութիւնս խորա-
31 նին Տեառն։ Եւ արարին Մովսէս եւ Ե-
ղիազար քահանայ որպէս հրամայեաց
Տէր Մովսիսի։
32 Եւ եղեւ աւելորդ աւարին զոր ածին
յաւարի արքն պատերազմօղք՝ յոչխարաց
վեց հարեւր հազար եւ եւթանասուն եւ
33 հինգ հազար, Եւ արջառ՝ եւթանասուն
34 եւ երկու հազարք, Եւ էշք՝ վաթսուն
35 եւ մի հազար, Եւ ոգիք մարդկան՝ ի կա-
նանց որ ոչ գիտէին զարութիւն առն, ա-
մենայն ոգիք՝ երեսուն եւ երկու հազարք։
36 Եւ եղեւ կէս աւարին երթելոցն ի պա-
տերազմ ի թուոյ ոչխարացն՝ երեք հա-
րեւր եւ երեսուն հազար եւ եւթն հա-
37 զար եւ հինգ հարեւր. Եւ եղեւ համն
Տեառն յոչխարէ՝ վեց հարեւր եւ եւթա-
38 նասուն եւ հինգ. Եւ արջառ՝ երեսուն
եւ վեց հազար, եւ համն Տեառն՝ եւթա-
39 նասուն եւ երկու. Եւ էշք՝ երեսուն հա-
զար եւ հինգ հարեւր, եւ համն Տեառն՝
40 վաթսուն եւ մի. Եւ ոգիք մարդկան՝ վեշ-
տասան հազար, եւ հաս ի նոցանէ Տեառն՝
41 երեսուն եւ երկու ոգիք։ Եւ ետ Մով-

[1] Յեբր. [illegible]  [2] Եբր. առին որդիքն Իսրայելի  [3] Եբր. ի բնակութիւնս  [4] Եբր. ի բանակն, ի դաշտսն Մովաբու  [5] Եբր. Միթէ ապրեցուցէ՞ք  [6] Եբր. աղխ, յաճախ նշանակէ մանկունք։  [7] Եբր. վիրաւոր, յաճախ նշանակէ սպանեալ  [8] Եբր. Միայն զոսկի եւ զարծաթ եւ զպղինձ եւ զերկաթ եւ զանագ եւ զկապար (23) Զամենայն որ անցանէ ընդ հուր՝ անցուցէք

[9] Եբր. յառաջառոյ եւ յիշոյ եւ յոչխարէ։ (29) Ի կիսոյ

նէս զհատն Տեառն զնուէրն [1]Աստուծոյ՝
Եղիազարու քահանայի, որպէս հրաման
ետ Տէր Մովսիսի։
42 [2]Զհասարակած որդւոցն Իսրայելի՝
զորս բաժանեաց Մովսէս յարանցն սպա-
43 ռնէրազմողաց։ Եւ եղեւ հասարակած ի
ժողովրդենէ անտի, յոչխարէ՝ երեք հա-
րեւր եւ երեսուն հազար եւ եւթն հա-
44 զար եւ հինգ հարեւր, Եւ արջառ՝ երե-
45 սուն եւ վեց հազար, Եւ էշք՝ երեսուն
46 հազար եւ հինգ հարեւր, Եւ ոգիք մարդ-
47 կան՝ վեշտասան հազար։ Եւ առ Մով-
սէս ի հասարակածէ որդւոցն Իսրայելի՝
մի ի յիսնէ, ի մարդոյ եւ յանասնոյ, եւ
ետ զայն Ղեւտացւոցն որ պահէին զպահ-
պանութիւն խորանին Տեառն, որպէս
հրաման ետ Տէր Մովսիսի։
48 Եւ մատեան առ Մովսէս ամենայն
վերակացուք հազարապետութեան զօ-
րուն, հազարապետք եւ հարիւրապետք.
49 Եւ ասեն ցՄովսէս, Ծառայք քո կալան
զհամար արանց պատերազմողաց առ ի
մէնջ, եւ ոչ ծախեցաւ ի նոցանէ եւ ոչ
50 մի։ Եւ բերաք մատուցանել ընծայ Տեառն,
այր որոյ գտանիցի ոսկի մեհեկանս կամ
ապարանջանք, եւ մատանի եւ կչաա-
պանակ եւ փողոչուկ ընդելուզեալ, քա-
51 ւել վասն մեր առաջի Տեառն։ Եւ ա-
ռին Մովսէս եւ Եղիազար քահանայ զոս-
կին ի նոցանէ, զամենայն անօթ զոր-
52 ծեալ։ Եւ եղեւ ամենայն ոսկի հասին
զոր հանին Տեառն՝ վեշտասան հազար
եւ եւթն հարեւր եւ յիսուն սիկղ՝ ի հա-
53 զարապետաց [3]անտի։ Եւ արք պատե-
րազմօղք որ ածին աւար, իւրաքանչիւր
54 ումեք"։ Եւ առին Մովսէս եւ Եղիազար
քահանայ զոսկին ի հազարապետաց ան-
տի եւ ի հարիւրապետաց, եւ տարան ի
խորանն վկայութեան, յիշատակ առ ի
յորդւոցն Իսրայելի առաջի Տեառն։

ԳԼ. ԼԲ

1 Եւ անասուն բազում էր որդւոցն [1]Իս-
րայելի, որդւոցն" Ռուբենի եւ որդւոցն
Գադայ զեղեալ յոյժ. եւ տեսին զերկիրն
Յազերայ եւ զերկիրն Գաղաադու, եւ
2 էր տեղին տեղի խաշանց։ Եւ մատու-
ցեալ որդիքն Ռուբենի եւ որդիքն Գա-
դայ ասեն ցՄովսէս եւ ցԵղիազար քա-
3 հանայ եւ ցիշխանս ժողովրդեանն, Ատա-
րովթ եւ Դիբոն եւ Յազեր եւ Նեմրա
եւ Եսեբոն եւ Եղէաղէ եւ Սեբամա եւ
4 Նաբաւ եւ Բէան, Երկիրն զոր մատ-
նեաց Տէր առաջի որդւոցն Իսրայելի,
երկիր անասնանոյց է. եւ ծառայից
5 քոց խաշինք են։ Եւ ասեն, Եթէ գտաք
շնորհս առաջի քո, տացի երկիրն այն
ծառայից քոց ի կալուած, եւ մի անց-
ուցաներ զմեզ ընդ Յորդանան։
6 Եւ ասէ Մովսէս ցորդիսն Գադայ եւ
ցորդիսն Ռուբենի, Եղբարք ձեր երթայցեն
ի պատերազմ, եւ դուք նստիցի՞ք աստ։
7 Եւ ընդէ՞ր խոտորեցուցանէք զմիտս որդ-
ւոցն Իսրայելի չանցանել յերկիրն զոր
8 Տէր տայոց է նոցա։ [1]Ո՞չ այդպէս արա-
րին հարքն ձեր, յորժամ առաքեցի զնո-
սա ի Կադեսբառնեայ զննել զերկիրն։
9 Եւ ելին ի Ձորն ողկուզի եւ դիտեցին զեր-
կիրն, եւ զանգիտեցուցին զմիտս որդ-
ւոցն Իսրայելի, զի մի՛ մտանիցեն յեր-
10 կիրն զոր ետ նոցա Տէր։ Եւ բարկացաւ
սրտմտութեամբ Տէր յաւուր յայնմիկ,
11 եւ երդուաւ եւ ասէ, Մի՛ տեսցեն արք
որ ելին յԵգիպտոսէ, ի քսանամենից եւ
ի վեր, [1]որ գիտիցեն զչար եւ զբարի,"
զերկիրն զոր երդուայ տալ Աբրահամու
եւ Իսահակայ եւ Յակոբայ, զի ոչ եկին
12 զհետ իմ. Բայց Քաղէբ որդի Յեփոնեայ
[1]զատուցեալն, եւ Յեսու որդի Նաւեայ,
13 զի եկին զկնի Տեառն։ Եւ բարկացաւ
սրտմտութեամբ Տէր ի վերայ Իսրայելի,
եւ յածեցոյց զնոսա յանապատին ամս
քառասուն, մինչեւ սատակեցաւ ամե-
նայն ազգն որ արարին զչարիս առաջի
14 Տեառն։ Եւ արդ դուք յարուցեալ էք
փոխանակ հարցն ձերոց, ժողովք մարդ-
կան մեղաւորաց, յաւելուլ միւսանգամ
ի սրտմտութիւն բարկութեան Տեառն ի
15 վերայ Իսրայելի։ Զի դարձեալ էք ի
նմանէ, յաւելուլ միւսանգամ լքանել
նմա զձեզ յանապատի աստ. եւ անօ-
րինիք յամենայն ժողովուրդս յայս։
16 Եւ մատեան առաջի նորա եւ ասեն,
Դադարս ոչխարաց մերոց շինեսցուք եւ
անասնոց մերոց, եւ քաղաքս աղխից
17 մերոց. Եւ մեք փութացուք [1]առաջի
Տեառն", առաջապահք երթիցուք որդ-
ւոցն Իսրայելի, մինչեւ հանցուք զնոսա
յիւրաքանչիւր տեղի. եւ բնակեսցէ աղխն

[1] Յեբր. ղ-ի-ա-ւ-ե [2] Եբր. Եւ ի հասարակածէ (ի կիսոյ բաժնէն) [3] Եբր. անտի եւ ի հարիւրապետաց. (53) Արանց պատերազմողաց առեալ էր աւար իւրաքանչիւր ոք վասն իւր

[1] Եբր. Կենեզացի

մեր ի քաղաքս պարսպաւորս վասն բնակ-
18 չաց երկրիս . Եւ ոչ դարձցուք ի տունս
մեր , մինչեւ բաժանեսցին որդիքն Իս-
րայելի զիւրաքանչիւր ժառանգութիւն ։
19 Եւ ոչ եւս ժառանգեսցուք ի մէջ նոցա
յանցիցն Յորդանանու եւ անդր . զի ու-
նիմք զվիճակս մեր յայսկոյս Յորդանա-
նու յարեւելից ։
20 Եւ ասէ ցնոսա Մովսէս , Եթէ առնի-
ցէք ըստ բանիդ ըստ այդմիկ , եթէ վա-
21 ռիցիք առաջի Տեառն ի պատերազմ , Եւ
անցցէ ձեր ամենայն վառեալ ընդ Յոր-
դանան առաջի Տեառն , մինչեւ սատա-
22 կեսցի թշնամին նորա առաջի նորա , Եւ
նուաճեսցի երկիրն առաջի Տեառն , եւ
ապա դառնայցէք , քաւեալ լինիջիք առաջի
Տեառն եւ յԻսրայելէ . եւ եղիցի երկիրս
23 այս ձեզ ի կալուած առաջի Տեառն ։ Ա-
պա թէ ոչ առնիցէք այդպէս , յանցաւոր
գտանիցիք առաջի Տեառն . եւ [1]ծանի-
ջիք զմեղս ձեր , յորժամ հասանիցեն
24 ձեզ չարիքն" ։ Եւ շինեսջիք դուք ձեզ
քաղաքս աղխին ձերոյ , եւ գաւարս
խաշանց ձերոց , եւ որ ինչ ել ի բերա-
նոյ ձերմէ՝ առնիցէք ։
25 Եւ խօսեցան որդիքն Ռուբենի եւ որ-
դիքն Գադայ ընդ Մովսիսի եւ ասեն ,
Արասցեն ծառայք քո որպէս հրամայեաց
26 մեզ տէրդ մեր ։ Աղխ մեր եւ կանայք
մեր եւ ամենայն անասուն մեր կացցեն
27 ի քաղաքս Գաղաադու ։ Եւ ծառայք քո
անցցեն վառեալք եւ կազմեալք առաջի
Տեառն ի պատերազմ , որպէս եւ տէրդ ասէ ։
28 Եւ յանձինն արար նոցա Մովսէս
զԵղիազար քահանայ , եւ զՅեսու որդի
Նաւեայ եւ զիշխանս նահապետաց ցե-
29 ղիցն Իսրայելի , Եւ ասէ ցնոսա Մով-
սէս , Եթէ անցցեն որդիքդ Ռուբենի եւ
որդիքդ Գադայ ընդ ձեզ ըստ Յորդանան ,
ամենեքին վառեալ ի պատերազմ առաջի
Տեառն , եւ ափրիցէք երկրին[2] առաջիք
դոցա զերկիրն Գաղաադու ի կալուածս .
30 Ապա թէ ոչ անցցեն ընդ ձեզ [3]վառեալք
ի պատերազմ առաջի Տեառն , անցուս-
ջիք զաղխ դոցա եւ զկանայս դոցա եւ
զանասուն դոցա յառաջագոյն քան զձեզ
յերկիրն Քանանացւոց , եւ" ժառանգեսցեն
31 ընդ ձեզ յերկրին Քանանացւոց։ Պատաս-
խանի ետուն որդիքն Ռուբենի եւ որդիքն
Գադայ եւ ասեն , Զոր ինչ [4]ասէ տէրդ
32 ցծառայս իւր" արասցուք ։ Մեք անց-
ցուք վառեալք առաջի Տեառն յերկիրն
Քանանացւոց , եւ առաջիք մեզ կալուածս
33 յայսկոյս Յորդանանու ։ Եւ ետ Մովսէս
որդւոցն Գադայ եւ որդւոցն Ռուբենի եւ
կիսոյ ցեղին Մանասէի որդւոցն Յով-
սեփայ զթագաւորութիւնն Սեհոնի ար-
քային Ամովրհացւոց , եւ զթագաւորու-
թիւնն Ովգայ արքային Բասանու , զեր-
կիրն եւ զքաղաքս սահմանօք իւրովք ,
եւ զքաղաքս երկրին շուրջանակի ։
34 Եւ շինեցին որդիքն Գադայ զԴեբոն
35 եւ զԱտարովթ եւ զԱրոյեր , Եւ [5]զՍո-
փար եւ զՅազեր , եւ [6]բարձրացուցին
36 զնոսա" , Եւ զՆամրան եւ զԲաւթառան ,
քաղաքս ամուրս եւ գաւարս հօտից ։
37 Եւ որդիքն Ռուբենի շինեցին զԵսե-
38 բոն եւ զԵղիաղէ եւ զԿարիաթեմ . Եւ
[7]զԲէեղմէոնն , շուրջ ամրացուցեալս ,"
եւ զՍեբամայ . եւ անուանեցին ըստ ա-
նուանց իւրեանց զանուանս քաղաքացն
զոր շինեցին ։
39 Եւ [8]գնաց որդի" Մաքիրայ որդւոյ Մա-
նասէի ի Գաղաադ եւ [9]առ զնա , եւ կո-
րոյս" զԱմովրհացին որ բնակեալ էր ի
40 նմա ։ Եւ ետ Մովսէս զԳաղաադ Մա-
քիրայ որդւոյ Մանասէի , եւ բնակեցաւ
41 անդ ։ Եւ Յայիր Մանասեան չոքաւ առ
զքաղաքս նոցա , եւ անուանեաց զնոսա
42 Աւանս Յայիրայ ։ Եւ Նաբաւ գնաց եւ
առ զԿանաթ եւ զաւանս նորա , եւ
անուանեաց [10]զնոսա Նաբաւթ ըստ ա-
նուան իւրոյ ։

## Գլ . ԼԳ

1 Եւ այս են բանակետեղք որդւոցն Իսրա-
յելի՝ յորմէ հետէ ելին յերկրէն Եգիպ-
տացւոց հանդերձ զօրուն իւրեանց ի ձեռն
2 Մովսիսի եւ Ահարոնի ։ Եւ գրեաց Մովսէս
զչուս նոցա եւ զբանակետեղս իւրեանց
բանիւ Տեառն . եւ այս են բանակետեղք
3 չուայից նոցա ։ Չուեցին յՌամեսեայ
յամսեանն առաջնում , ի հնգետասանե-
րորդում աւուր ամսոյն առաջնոյ . զայ-
գոյ զատկին ելին որդիքն Իսրայելի բարձ-
րացեալ ձեռամբ առաջի ամենայն Եգիպ-
4 տացւոցն . Եւ Եգիպտացիքն թաղէին
զամենայն մեռեալսն ի նոցանէ , զորս

[1]Եբր. գիտասջիք եթէ մեղք ձեր գտցեն զձեզ [2]Եբր.—յետին յաւելու, որ առաջի ձեր, և [3]Եբր. վառեալք, յայնժամ

[4]Եբր. ասաց Տէր ցծառայս քո, այնպէս [5]Եբր. զԱթրովթ-Սոփան [6]Եբր. զՅոգբեհա [7]Եբր. զՆաբաւ եւ զԲէեղմէոն, (փոխեալ զանուանս) [8]Եբր. գնացին որդիքն [9]Եբր. առին զնա եւ կորուսին [10]Եբր. զնա-

կոտորեաց Տէր, զամենայն անդրանիկս
[1]յերկրին Եգիպտացւոց", եւ ի դիս նոցա
արար [2]վրէժխնդրութիւն Տէր։
5 Եւ չուեալ որդւոցն Իսրայելի յՌա-
6 մեսսեայ բանակեցան ի Սոկքովթ։ Եւ
չուեալ ի Սոկքովթայ՝ բանակեցան [3]ի
Բովթան, որ է մասն ինչ" անապատին։
7 Չուեցին [4]բանակեցան առ բերանովն Ե-
պիրովթայ", որ է յանդիման Բէեղսեպ-
փովնայ, եւ բանակեցան հանդէպ Մագ-
8 դովղայ։ Չուեցին [5]հանդէպ Եպիրով-
թայ", եւ անցին ընդ մէջ ծովուն յա-
նապատն, եւ գնացին նոքա երեքօրեայ
ճանապարհ ընդ [6]անապատն եւ բանա-
9 կեցան [7]ղԴառն ապրերակքն"։ Չուեցին [8]ի
Դառն աղբերացն" եւ եկին յԵղիմ. եւ
էին յԵղիմ երկոտասան ակն ջրոց, եւ
եւթանասուն ծառ արմաւենեաց. եւ
10 բանակեցան անդ [1]առ ջրովն"։ Չուեցին
յԵղիմայ, եւ բանակեցան զափամբ Կար-
11 միր ծովուն։ Չուեցին ի Կարմիր ծովէն,
եւ բանակեցան յանապատին ի Սին։
12 Չուեցին ի Սին անապատէն, եւ բանա-
13 կեցան ի Դափկա։ Չուեցին ի Դափկայ,
14 եւ բանակեցան յԵղուս։ Չուեցին յԵղու-
սայ, եւ բանակեցան յՌափիդիմ. եւ ոչ
15 գոյր ջուր ըմպելոյ ժողովրդեանն։ Չուե-
ցին յՌափիդիմայ, եւ բանակեցան յա-
16 նապատին Սինայ։ Չուեցին յանապատէն
Սինայ, եւ բանակեցան ի Գերեզմանս
17 ցանկութեան։ Չուեցին ի Գերեզմանացն
ցանկութեան, եւ բանակեցան յԱսե-
18 րովթ։ Չուեցին յԱսերովթայ, եւ բա-
19 նակեցան յՌաթամա։ Չուեցին յՌաթա-
մայ, եւ բանակեցան յՌեմոնփարէս։
20 Չուեցին յՌեմոնփարեսայ, եւ բանա-
21 կեցան ի Ղեբոնա։ Չուեցին ի Ղեբոնայ,
22 եւ բանակեցան յՌեսսա։ Չուեցին։
յՌեսսայէ, եւ բանակեցան ի Կեղղաթ։
23 Չուեցին ի Կեղղաթայ, եւ բանակեցան
24 [9]ի Սովփար։ Չուեցին ի Սովփարայ", եւ
25 բանակեցան ի Քարադաթ։ Չուեցին ի
Քարադաթայ, եւ բանակեցան ի Մակե-
26 ղովթ։ Չուեցին ի Մակեղովթայ, եւ
27 բանակեցան ի Կատտաաթ։ Չուեցին ի
Կատտաաթայ, եւ բանակեցան ի Տարաթ։
28 Չուեցին ի Տարաթայ, եւ բանակե-
29 ցան ի Մատեկա։ Չուեցին ի Մատեկայ,
30 եւ բանակեցան ի Սեղմոնա։ Չուեցին ի
Սեղմոնայ, եւ բանակեցան ի Մասու-
31 րութ։ Չուեցին ի Մասուրութայ, եւ
32 բանակեցան ի Բանէա։ Չուեցին ի Բա-
նէայ, եւ բանակեցան ի լերինն Գադ-
33 գադ։ Չուեցին ի լեռնէ անտի Գադգա-
34 դայ, եւ բանակեցան յԵտեբաթա։ Չուե-
ցին յԵտեբաթայ, եւ բանակեցան յԵբ-
35 րոնա։ Չուեցին յԵբրոնայ, եւ բանա-
36 կեցան ի Գասիոնգաբեր։ Չուեցին ի Գա-
սիոնգաբերայ, եւ բանակեցան յանա-
պատին ի Սին. [1]չուեցին ի Սինն անա-
պատէ, եւ բանակեցան յանապատին
Փառանու," այն է Կադէս։
37 Չուեցին ի Կադեսայ, եւ բանակեցան
ի Հովր լերինն, մերձ առ երկրաւն Եդով-
38 մայ։ Եւ ել Ահարոն քահանայ [10]ի լեառնն
հրամանաւ Տեառն եւ մեռաւ անդ, ի
քառասներորդի ամի ելանելոյ որդւոցն
Իսրայելի յերկրէն Եգիպտացւոց, յամ-
սեանն հինգերորդի, որ օր մի էր ամսոյն։
39 Եւ Ահարոն էր հարեւր եւ քսան եւ երից
ամաց յորժամ մեռաւ ի Հովր լերինն։
40 Եւ լուաւ Քանանիս արքայ Արադայ,
եւ ինքն բնակեալ էր [11]յերկրին Քանա-
նացւոց, յորժամ մտանէին որդիքն Իս-
րայելի։
41 Չուեցին ի Հովր լեռնէ, եւ բանակե-
42 ցան ի Սեղմոնա։ Չուեցին ի Սեղմոնայ,
43 եւ բանակեցան ի Փենով։ Չուեցին ի Փե-
44 նովայ, եւ բանակեցան յՈբովթ։ Չուե-
ցին յՈբովթայ, եւ բանակեցան ի Գայի՝
45 յայնկոյս սահմանացն Մովաբու։ Չուեցին
ի Գայեայ, եւ բանակեցան ի Դեմոնգադ։
46 Չուեցին ի Դեմոնգադայ, եւ բանակե-
47 ցան ի Գեղմոնդեբղաթէմ։ Չուեցին ի
Գեղմոնդեբղաթեմայ, եւ բանակեցան ի
լերինսն Աբարիմ յանդիման Նաբաւայ։
48 Չուեցին ի լերանցն Աբարիմայ, եւ բա-
նակեցան [12]յարեւմտից Մովաբու առ Յոր-
49 դանանաւ յանդիման Երիքովի։ Եւ բա-
նակեցան զՅորդանանաւ [13]ի մէջ Եսի-
մովթայ", մինչեւ ցԱբեղսատով [12]յա-
րեւմտից Մովաբու։
50 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի [12]յա-
րեւմտից Մովաբու առ Յորդանանաւ
51 յանդիման Երիքովի, եւ ասէ, Խօսեաց
ընդ որդիսդ Իսրայելի եւ ասասցես ցդո-
սա, Դուք անցանիցէք ընդ

[1] Յեբր· դ–յ–ւէ [2] Եբր· դատաստան [3] Եբր· յԻ-թոմ, որ է ի ծայր [4] Եբր· յԻԹոմայ եւ դարձան այսրէն ի Փիայրոթ [5] Եբր· առ Փիայրոթաւ [6] Եբր· անապատն Ոթոմ [7] Եբր· ի Մեռա [8] Եբր· ի Մեռայ [9] Եբր· ի լերինն Սովփար։ (24) Չուեցին ի լեռնէն Սովփարայ

[10] Եբր· ի Հովր լեառն [11] Եբր· ի հարաւոյ երկրին [12] Եբր· ի դաշտսն [13] Եբր· ի Բեթեսիմովթայ

52 Ցորդանան յերկիրն Քանանացւոց․ Եւ
կորուսջիք զամենայն բնակիչս երկրին
յերեսաց ձերոց, եւ կործանեսջիք [1]զդի-
տանոցս երկրի" նոցա, եւ զամենայն
կուռս ձուլածոյս նոցա կորուսջիք, եւ
զամենայն զարձանս նոցա բառնայցէք ի
53 միջոյ։ Եւ կորուսջիք զբնակիչս երկրին,
եւ բնակեսջիք դուք ի նմա․ զի ձեզ ե-
54 տու զերկիրն նոցա ի վիճակ։ [2]Ըստ ցեղից
ձերոց, ըստ բազմաց՝ բազմացուցանի-
ջիք զկալուածս իւրեանց, եւ ըստ սա-
կաւուց՝ սակաւացուսջիք զկալուածս
իւրեանց․ որպէս ելանիցէ յանուն ուրուք՝
անդ լինիցի․ ըստ ցեղից նահապետու-
55 թեան ձերոյ ժառանգեսջիք։ Եւ եթէ ոչ
կորուսանիցէք զբնակիչս երկրին յերե-
սաց ձերոց, եղիցին զոր թողուցուքն ի
նոցանէ՝ խոչ յական ձերում եւ նետք ի
կողս ձեր, եւ եղիցին ձեզ թշնամիք յերկ-
56 րին յորում դուք բնակիցէք։ Եւ եղիցի
որպէս խորհէի առնել նոցա, արարից ձեզ։

ԳԼ․ ԼԴ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ա-
2 սէ, Պատուիրեա որդւոցն Իսրայելի եւ
ասասցես ցնոսա, Դուք մտանէք յերկիրն
Քանանացւոց, եւ այն լիցի ձեզ ի ժա-
ռանգութիւն, երկիրն Քանանու հանդերձ
3 սահմանօք իւրովք․ Եւ եղիցի ձեզ կողմն
ընդ հարաւ ի Սինն անապատէ մինչեւ մօտ
յԵդովմ․ եւ եղիցին ձեզ սահմանքն որ
ընդ հարաւ իցեն, ի մասնէ Աղի ծովուն
4 յարեւելից կողմանէ․ Եւ պատիցին սահ-
մանքն ձեր ի հարաւոյ՝ ընդ սարն Ակ-
րաբինայ եւ անցցեն [3]յԵնակ, եւ եղի-
ցին ելք նորա ընդ հարաւոյ կողմն Կա-
դեսբառնեայ․ եւ ելցեն [4]յաւանն Արա-
5 դայ" եւ անցցեն յԱսեմոն․ Եւ պատիցին
սահմանքն յԱսեմոնայ ձորոյն Եգիպտա-
ցւոց, եւ եղիցին ելք նորա ընդ ծովն։
6 Եւ սահմանք [5]ծովուն ձեզ լիցին․ ծովն
մեծ սահման իցէ, եւ այն լիցին ձեզ
սահմանք [5]ծովուն։
7 Եւ այս լիցին ձեզ սահմանք ընդ կողմն
հիւսիսոյ․ ի մեծէ ծովէն չափեսջիք ձեզ
8 [6]զլեառնլեռնայն․ Եւ" ի լեռնէ անտի չա-
փեսջիք զնոյն մինչեւ ի մուտն Եմաթայ,
եւ եղիցին ելք նորա սահմանքն Սադա-
9 դայ․ Եւ ելանիցէ առ սահմանօքն Զեփ-
րոնայ, եւ եղիցին ելք նորա Ասրենա-
յին․ այն լիցին ձեզ սահմանք ի հիւսիսոյ։
10 Եւ չափեսջիք ձեզ սահմանս յարեւե-
11 լից՝ յԱսրենայինայ ցՍեփամար․ Եւ ի-
ջանիցեն սահմանքն ի Սեփամարայ
ցԲեղա, յարեւելից կողմանէ աղբերացն․
եւ իջցեն սահմանքն ի Բեղայ մինչեւ
ցծովն Քեներայ յարեւելից կողմանէ․
12 Եւ իջանիցեն սահմանքն մինչեւ ցՅոր-
դանան, եւ ելք նորա լինիցին ծովն Ա-
ղի։ Այն ամենայն երկիր լինիցի ձեզ,
եւ սահմանք նորա շուրջանակի։
13 Եւ պատուիրեաց Մովսէս որդւոցն
Իսրայելի եւ ասէ, Այս է երկիրն զոր
ժառանգիցէք զսա վիճակաւ, որպէս
հրաման ետ Տէր տալ զնա ինն ցեղիցն
14 եւ կիսոյ ցեղին Մանասէի․ Վասն զի
[7]առ ցեղ որդւոցն Ռուբենի" եւ ցեղ որդ-
ւոցն Գադայ՝ ըստ տանց նահապետաց
իւրեանց, եւ կէս ցեղին Մանասէի,
15 զվիճակս իւրեանց [8]Յայնկոյս Յորդա-
նանու յանդիման Երիքովի [9]ի հարաւոյ
ընդ կողմն արեւելից։
16 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի եւ ա-
17 սէ, Այս անուանք են արանցն՝ որ ժա-
ռանգեցուցանիցեն ձեզ զերկիրն․ Եղիա-
18 զար քահանայ եւ Յեսու Նաւեան․ Եւ
մի մի իշխան ի ցեղէ առնուցուք ժա-
19 ռանգեցուցանել ձեզ զերկիրն։ Եւ այս
անուանք են արանցն․ ցեղին Յուդայ՝
20 Քաղէբ որդի Յեփոնեայ․ Ցեղին Շմաւո-
21 նի՝ Սաղամիէլ որդի Ամիուդայ․ Ցեղին
Բենիամինի՝ Եղդադ որդի Քասղովդայ․
22 Ցեղին Դանայ՝ իշխան Բակքիր որդի Եգ-
23 ղայ․ Որդւոյն Յովսեփայ, ցեղի որդ-
ւոցն Մանասէի՝ իշխան Անիէլ որդի Սու-
24 փիայ․ Ցեղի որդւոցն Եփրեմի՝ իշխան
25 Կամուէլ որդի Սաբաթայ․ Ցեղին Զա-
բուղոնի՝ իշխան Եղիսափան որդի Փառ-
26 նաքայ․ Ցեղի որդւոցն Իսաքարայ՝ իշ-
27 խան Փաղտիէլ որդի Ոզիայ․ Ցեղի որդ-
ւոցն Ասերայ՝ իշխան Աքիովր որդի Սե-
28 ղեմեայ․ Ցեղին Նեփթաղիմայ՝ իշխան
29 Փադայէլ որդի Ամիուդայ։ Սոքա են ո-
րոց հրաման ետ Տէր բաժանել որդւոցն
Իսրայելի զերկիրն Քանանացւոց։

ԳԼ․ ԼԵ

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի [10]յարեւ-

[1] Եբր․ զամենայն պատկերս [2] Եբր․ Եւ ժառանգեսջիք զերկիրն վիճակաւ ըստ [3] Եբր․ ի Սին [4] Եբր․ յԱսար-ադդար [5] Եբր․ արեւմտից [6] Եբր․ մինչեւ ցլեառնն Հովր․ (8) Եւ ի Հովր

[7] Եբր․ առին ցեղ որդւոցն Ռուբենի ըստ տանց նահապետաց իւրեանց․ [8] Եբր․ Երկու ցեղք եւ կէս ցեղի առին զժառանգութիւն իւրեանց յայնկոյս [9] Յեբր․ դ–է–ա–ե [10] Եբր․ ի դաշտս

մուտս Մովաբու՝ առ եզերբ Յորդանա-
2 նու յանդիման Երիքովի, եւ ասէ, Հրա-
ման տուր որդւոցն Իսրայէլի, եւ տա-
ցեն Ղեւտացւոցն ի վիճակաց կալուա-
ծոց իւրեանց քաղաքս բնակութեանց,
եւ [1]բուրաստանս շուրջ զքաղաքօք իւր-
3 եանց տացեն Ղեւտացւոցն։ Եւ եղիցին
նոցա քաղաքք բնակութեան, եւ [2]զա-
տուցեալքն նոցա եղիցին [3]խաշանց նո-
ցա, եւ ամենայն չորքոտանեաց նոցա։
4 Եւ արուարձանք քաղաքացն զորս տայ-
ցէք Ղեւտացւոցն ի պարսպէ քաղաքին
եւ արտաքոյ պարսպին [4]երկուս հազարս
5 կանգունս՝՝ շուրջանակի։ Եւ չափեսջիք
արտաքոյ քաղաքին, յարեւելից կող-
մանէ երկուս հազարս կանգունս, եւ
ընդ հարաւոյ կողմն երկուս հազարս
կանգունս, եւ ընդ ծովակողմն երկուս
հազարս կանգունս, եւ ընդ կողմն հիւ-
սիսի երկուս հազարս կանգունս. եւ
քաղաք [5]ի մէջ այնորիկ լինիցի ձեզ. եւ
6 զարուարձանս՝՝ քաղաքացն։ Եւ զքա-
ղաքսն զորս տայցէք Ղեւտացւոցն, զվեց
քաղաքս ապաստանից զոր տայցէք,
փախչել անդր սպանողին. եւ առ այնու
7 քառասուն եւ երկուս քաղաքս։ Ընդ
ամենայն քաղաքս՝ քառասուն եւ ութ
քաղաք տայցէք Ղեւտացւոցն, եւ զնո-
8 սա եւ [6]զբուրաստանս իւրեանց։ Եւ
զքաղաքս՝ զոր տայցէք ի կալուածոց
որդւոցն Իսրայէլի, ի բազմաց բազումս,
եւ ի սակաւուց՝ սակաւս. ըստ իւրաքան-
չիւր ժառանգութեան զոր ժառանգիցեն՝
տացեն ի քաղաքաց անտի՝ Ղեւտացւոցն։
9 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի եւ ա-
10 սէ, Խօսեաց ընդ որդիսն Իսրայէլի եւ
ասասցես ցնոսա, Դուք աւադիկ անցա-
նէք ընդ Յորդանան յերկիրն Քանանաց-
11 ւոց, Եւ զատուսջիք ձեզ քաղաքս, որ
լինիցին ձեզ ապաստանաց՝ փախչել անդր
սպանողին, [7]ամենայն որ հարկանիցէ
12 զանձն ուրուք ակամայ։ Եւ եղիցին ձեզ
քաղաքք ապաստանի ի մերձաւորէ ար-
եանն, եւ մի՛ մեռանիցի սպանողն մին-
չեւ կացցէ առաջի ժողովրդեանն ի դա-
13 տաստանի։ Եւ քաղաքքն զոր տայցէք՝
վեց քաղաքք ապաստանի լինիցին ձեզ։
14 Երիս քաղաքս տաջիք յայնկոյս Յորդա-
նանու, եւ երիս քաղաքս տաջիք յերկ-
րին Քանանացւոց, եւ եղիցի այն ապա-
15 ւինութիւն Որդւոցն Իսրայէլի, եկին եւ
պանդխտին ի միջի ձերում, եղիցին
քաղաքքն այնոքիկ վեց՝ ապաստանք,
փախչել անդր ամենայնի որ հարկանիցէ
զանձն ուրուք ակամայ։
16 Եւ եթէ երկաթեղէն անօթով ոք հար-
կանիցէ եւ սպանանիցէ զնա, սպանող
17 է. մահու մեռցի սպանողն։ Եւ եթէ
բռնաքարաւ որով մեռանիցի ոք՝ հար-
կանիցէ զնա եւ մեռանիցի, սպանող է.
18 մահու մեռցի սպանողն։ Եւ եթէ փայ-
տեղէն անօթով ի ձեռանէ որով մեռա-
նիցի ոք՝ հարկանիցէ զնա եւ մեռանի-
ցի, սպանող է. մահու մեռցի սպանողն.
19 Մերձաւոր արեանն սպանցէ զսպանողն.
յորժամ պատահեսցէ նմա՝ սպանցէ զնա։
20 Եւ եթէ առ թշնամութեան մղեսցէ զնա,
եւ ձգեսցէ նմա զամենայն անօթ խար-
21 դախութեամբ եւ մեռանիցի, Կամ առ
քինալ հարկանիցէ զնա ձեռամբ իւրով
եւ մեռանիցի, մահու մեռցի որ եհարն.
սպանող է, [7]մահու մեռցի որ սպանի-
ցէն։՝՝ Մերձաւոր արեանն սպանցէ զսպա-
նողն ի պատահելն նորա նմա։
22 Ապա թէ վրիպակաւ եւ ոչ առ թշնա-
մութեան մղեսցէ զնա, եւ ձգեսցէ նմա
զամենայն անօթ եւ ոչ խարդախու-
23 թեամբ, Կամ զամենայն քար որով մե-
ռանիցի, եւ ոչ գիտութեամբ հարկանիցէ
զնա եւ մեռանիցի, եւ նա չէր նորա
թշնամի եւ ոչ խնդրէր չար առնել նմա,
24 Դատեսցի ժողովուրդն ի մէջ [8]հարկա-
նելեացն եւ ի մէջ մերձաւորի արեանն
25 ըստ դատաստանացս այսոցիկ. Եւ ապ-
րեցուսցէ ժողովուրդն զսպանողն ի մեր-
ձաւորէ արեանն, եւ յուղարկեսցէ զնա
ժողովուրդն անդրէն ի քաղաքն ապաս-
տանի յոր ապաւինեալն էր. եւ բնակես-
ցէ անդ մինչեւ մեռանիցի քահանայն
26 մեծ զոր օծին իւղովն սրբութեան։ Եւ
եթէ ելանելով ելանիցէ սպանողն ըստ
սահմանս քաղաքին յոր ապաւինեցաւն,
27 Եւ գտցէ զնա մերձաւոր արեանն ար-
տաքոյ սահմանաց քաղաքին ապաստա-
նի իւրոյ, եւ սպանցէ մերձաւոր ար-
եանն զսպանողն, մի՛ լինիցի մահապարտ։
28 Վասն այնորիկ ի քաղաքի ապաւինին
իւրոյ բնակեսցէ, մինչեւ մեռանիցի քա-

[1] Եբր. արուարձանս [2] Եբր. արուարձանքն [3] Եբր. արջառոց եւ խաշանց [4] Եբր. կանգունս հազար [5] Եբր. ի միջի. այս լինիցի նոցա արուարձանք [6] Եբր. զարուարձանս [7] ՅԵբր. գ—լ—ւ

[8] Եբր. հարկանելւոյն (սպանողին)

հանայն մեծ . եւ յետ մեռանելոյ քահա-
նային մեծի՝ դարձցի սպանօղն
29 յերկիր կալուածոյ իւրոյ ։ Եւ եղիցի այս
ձեզ յիրաւունս դատաստանի յազգս ձեր,
յամենայն բնակութեան ձերում ։
30 Ամենայն որ հարկանիցէ զանձն, վկա-
յիւք սպանցեն զսպանօղն . եւ մի միայն
վկայ մի՛ վկայեսցէ սպանանելոյ զանձն ։
31 Եւ փրկանս ընդ անձին ի սպանողէն որ
մահապարտ իցէ՝ մի՛ առնուցուք . այլ
32 մահու մեռանիցի ։ Եւ մի՛ առնուցուք
փրկանս վասն [1]փախչելոյ ի քաղաքն ա-
պաստանի առ միւսանգամ բնակելոյ
յերկրին, մինչեւ մեռանիցի քահանայն
33 մեծ ։ Եւ մի՛ չաղախիցէք զերկիրն[2] . եւ
ոչ քաւիցի երկիրն յարենէն հեղլոյ ի վե-
34 րայ նորա, եթէ ոչ արեամբն հեղլոյն ։ Եւ
մի՛ պղծիցէք զերկիրն յորում բնակիցէք
ի նմա, յորում ես բնակեցայց ի միջի
[3]ձերում . զի ես եմ Տէր [4]Աստուած, որ
բնակեմ ի մէջ որդւոցն Իսրայելի ։

Գլ. ԼԶ

1 Եւ մատեան իշխանք ցեղի որդւոցն
Գաղաադու որդւոյ Մաքիրայ որդւոյ
Մանասէի ի ցեղէ որդւոցն Յովսեփու,
եւ խօսեցան առաջի Մովսիսի եւ ʻառա-
ջի Եղիազարու քահանայի, եւ" առաջի
իշխանաց տանց նահապետաց որդւոցն
2 Իսրայելի, Եւ ասեն, Տեառն մերում
հրաման ետ Տէր տալ զերկիրն ժառան-
գութեան [5]վիճակ որդւոցն Իսրայելի .
եւ տեառնդ հրաման ետ Տէր տալ [6]ժա-
ռանգութիւն դստերացն Սաղպաադու
3 եղբօր մերում ." Եւ արդ եթէ լինիցին
միում ցեղիցն Իսրայելի կանայք, եւ
բառնայցի վիճակ նոցա ի կալուածոյ
հարց մերոց, եւ յաւելուցու ի ժառան-
գութիւն այնր ցեղի որոց լինիցին կա-
նայք, եւ ի վիճակէ ժառանգութեան
4 մերոյ բառնայցի . Եւ եթէ լինիցի [7]թո-
ղութիւն որդւոցն Իսրայելի, յաւելու-
ցու ժառանգութիւն նոցա ի ժառան-
գութիւն ցեղին որոց լինիցին կանայք,
եւ ի ժառանգութենէ ցեղի ազգիս մե-
րոյ բառնայցի ժառանգութիւն նոցա ։
5 Եւ պատուիրեաց Մովսէս որդւոցն
Իսրայելի հրամանաւ Տեառն եւ ասէ,
[8]առ այն զոր ասաց ցնա" ցեղ որդւոցն
6 Յովսեփայ ։ Այս բան է զոր հրաման ետ
Տէր դստերացն Սաղպաադու, եւ ասէ,
Որոց հաճոյ թուեսցի յաչս նոցա՝ եղի-
ցին նոքա կանայք, բայց ի ցեղէ հօրն
7 իւրեանց եղիցին կանայք . Եւ մի՛ փո-
խեսցի ժառանգութիւն որդւոցն Իսրա-
յելի ցեղէ ի ցեղ . զի յիւրաքանչիւր ժա-
ռանգութիւն հայրենի ցեղի իւրոյ յա-
8 րեսցին որդիքն Իսրայելի ։ Եւ ամենայն
օրիորդ [9]մերձաւոր ժառանգութեան" ի
ցեղից որդւոցն Իսրայելի՝ միում ումեք
յազգականէ հօր իւրոյ լինիցի կին, զի
[10]մերձաւորեսցուսցեն որդիքն Իսրայելի
իւրաքանչիւր զհայրենի ժառանգութիւն
9 իւր . Եւ մի՛ փոխեսցի վիճակ ի ցեղէ
յայլ ցեղ . այլ իւրաքանչիւր յիւր ժա-
ռանգութիւն յարեսցին որդիքն Իսրայելի ։
10 Եւ որպէս հրաման ետ Տէր Մովսի-
սի, այնպէս արարին դստերքն Սաղ-
11 պաադու ։ Եւ եղեն Թերսա եւ Եգղա եւ
Մեղքա եւ Նուա եւ Մաաղա դստերքն
Սաղպաադու՝ հօրեղբարց որդւոյ իւ-
12 րեանց կանայք ։ Ի ցեղէն [11]Մանասէի որդ-
ւոյն" Յովսեփայ եղեն կանայք, եւ ե-
ղեն ժառանգութիւնք նոցա յազգատոհ-
13 մի հօրն իւրեանց ։ Այս են պատուի-
րանք ʻեւ իրաւունք" եւ դատաստանք
զոր պատուիրեաց Տէր ի ձեռն Մովսիսի
[12]յարեւմուտս Մովաբու, առ եզերբ Յոր-
դանանու յանդիման Երիքովի ։

[1] Եբր. փախուցելոյն [2] Եբր—յէ:էն ,——Եւ——. յո-րում էք դուք. զի արիւնն այն պղծէ զերկիրն [3] Եբր. Նորա [4] Եբր. դ—յ——ե [5] Եբր. վիճակաւ [6] Եբր. զժառանգութիւն Սաղպաադու եղբօր մե-րոյ դստերաց նորա

[7] Եբր. յօբելեան [8] Եբր. Ուղիղ խօսեցաւ [9] Եբր. որ ժառանգեսցէ ժառանգութիւն [10] Եբր. ժա-ռանգեսցեն [11] Եբր. որդւոցն Մանասէի որդւոյն [12] Եբր. որդւոցն Իսրայելի ի դաշտսն

# ԳԼՈՒԽՔ ԵՐԿՐՈՐԴՄԱՆ ՕՐԻՆԱՑ

# ԵՐԿՐՈՐԴՈՒՄՆ ՕՐԻՆԱՑ

## ԳԼՈՒԽ Ա

1 ԱՅՍ են պատգամք զոր խօսե-
ցաւ Մովսէս ընդ ամենայն Իս-
րայելի յայնկոյս Յորդանանու յանապա-
տին [1]յարեւմուտս՝ մերձ ի ծովն Կարմիր,
ի մէջ Փառանտոփողայ, եւ Ղոբանայ,
2 եւ Հանգրուանացն եւ Ոսկեկայ"։ (Մե-
տասանօրեայ ճանապարհ ի Քորեբայ
[2]ցլեառն Սէիր" մինչեւ ցԿադէսբառնեայ։)
3 Եւ եղեւ ի քառասներորդում ամի, յամ-
սեանն մետասաներորդում, որ օր մի էր
ամսոյն, խօսեցաւ Մովսէս ընդ [3]ամե-
նայն որդիսն Իսրայելի, ըստ ամենայնի
որպէս պատուիրեաց նմա Տէր առ նո-
4 սա, Յետ հարկանելոյ զՍեհոն արքայ
Ամովրհացւոց զբնակեալն յԵսեբոն,
եւ զՈվգ արքայ Բասանու զբնակեալն
5 յԱստարովթ եւ յԵդրային. Յայնկոյս
Յորդանանու յերկրին Մովաբու սկսաւ
Մովսէս մեկնել զօրէնս զայսոսիկ եւ ասէ,
6 Տէր Աստուած մեր խօսեցաւ ընդ մեզ
ի Քորեբ եւ ասէ, Շատ լիցի ձեզ բնա-
7 կել ի լերինս յայսմ. Դարձարուք եւ
չուեցէք դուք աստի, եւ մտանիցէք ի
լեառնն Ամովրհացւոց, եւ առ ամենե-
սին որ շուրջ բնակեալ իցեն [4]զԱրաբաց-
ւովք ի լերինս եւ ի դաշտս" ընդ հարաւ
եւ ընդ [5]ծովեզրն Քանանացւոց, եւ յա-
ներն Լիբանանու" մինչեւ ցգետն մեծ
8 ցգետն Եփրատ։ Տեսէք զի ահա մատ-
նեցի առաջի ձեր զերկիրն, մտէք ժա-
ռանգեցէք զերկիրն զոր երդուայ ես
հարցն ձերոց, Աբրահամու եւ Իսահա-
կայ եւ Յակոբայ, տալ նոցա եւ զաւա-
կի նոցա յետ նոցա [3]զերկիրն որ բղխէ
զկաթն եւ զմեղր"։
9 Եւ խօսեցայ ընդ ձեզ ի ժամանակին
յայնմիկ եւ ասեմ, Ոչ կարեմ միայն հան-
10 դարտել ձեզ. Տէր Աստուած [6]մեր բազ-
մացոյց զձեզ, եւ ահաւասիկ էք դուք
այսօր իբրեւ զաստեղս երկնից բազմու-
11 թեամբ։ Տէր Աստուած հարցն [7]մերոց
յաւելցէ ի ձեզ եւս քան որչափ էքդ հա-
զարապատիկ, եւ օրհնեսցէ զձեզ որպէս
12 եւ խօսեցաւ ընդ ձեզ։ Եւ զիա՞րդ կա-
րիցեմ միայն կրել զաշխատութիւն ձեր
եւ [8]զպախս ձեր եւ զհակառակութիւնս
13 ձեր։ Արդ տուք ի ձէնջ արս իմաս-
տունս եւ խորհրդականս եւ [9]հանճարեղս
ի վերայ" ցեղից ձերոց, եւ կացուցից ի
14 վերայ ձեր իշխանս ձեզ։ Եւ պատաս-
խանի տուեալ ասացէք ցիս, Բարւոք է
15 բանդ զոր խօսեցար առնել։ Եւ առի ի
ձէնջ զցեղապետսն, արս իմաստունս եւ
հանճարեղս եւ խորհրդականս, եւ կա-
ցուցի զնոսա ի վերայ ձեր առաջնորդս.
հազարապետս եւ հարիւրապետս եւ յիս-
նապետս եւ տասնապետս եւ ատենա-
դպիրս դատաւորացն ձերոց։
16 Եւ պատուիրեցի դատաւորացն ձերոց
ի ժամանակին յայնմիկ եւ ասեմ, Լուա-
րուք ատենի ի մէջ եղբարց ձերոց, եւ
դատեցարուք արդարութեամբ ի մէջ առն
եւ եղբօր իւրոյ, եւ ի մէջ եկին իւրոյ.
17 Եւ մի՛ առնուցուս ակն ի դատաստանի,
[10]ըստ փոքուն եւ ըստ մեծին դատիցիս".
եւ մի՛ խորշիցիս յերեսաց մարդոյ, զի
դատաստանն Աստուծոյ է. եւ բան ինչ
որ ծանրագոյն քան զձեզ իցէ, հասուս-
18 ջիք առ իս եւ լուայց։ Եւ պատուիրեցի
ձեզ ի ժամանակին յայնմիկ զամենայն
բանս զոր առնիցէք։
19 Եւ չուեալ ի Քորեբայ շրջեցաք ընդ
ամենայն անապատն ընդ մեծ եւ ընդ
ահագին, զոր դուք իսկ տեսէք, զճա-
նապարհ լերինն Ամովրհացւոց, որպէս
պատուիրեաց Տէր Աստուած մեր մեզ,
20 եւ եկաք մինչեւ ցԿադէսբառնեայ։ Եւ
ասացի ցձեզ, Եկայք մինչեւ ցլեառնն
Ամովրհացւոց զոր Տէր Աստուած մեր

[1]Եբր․ ի դաշտին, մերձ ի Սուփ, ի մէջ Փառա-
նու եւ Տոփեղայ, եւ Ղոբանայ, եւ Ասերովթայ
եւ Տիզահաբայ [2]Եբր․ ընդ ճանապարհ լերինն
Սէիր [3]Եբր․ [illegible] [4]Եբր․ ի դաշտին, ի
լերինն եւ ի հովտին եւ [5]Եբր․ ծովեզրն, ընդ
երկիրն Քանանացւոց եւ ի Լիբանան

[6]Եբր․ ձեր [7]Եբր․ ձերոց [8]Եբր․ զբեռն [9]Եբր․ ծանօթս
ըստ [10]Եբր․ որպէս մեծին, նոյնպէս փոքուն լուիջիք

21 տացէ [1]ձեզ ։ [2]Տեսէք զի Տէր Աստուած
[3]մեր մատնեաց առաջի երեսաց [4]ձերոց
զերկիրն ․ [5]ելէք , ժառանգեցէք՝՝ որպէս
ասաց Տէր Աստուած հարցն [6]մերոց ձեզ՝՝․
մի՛ [7]երկնչիցիք եւ մի՛ զանգիտիցէք՝՝ ։
22 Եւ մատեայք առ իս ամենեքեան եւ
ասացէք , Առաքեսցուք յառաջագոյն քան
զմեզ արս , եւ դիտեսցեն մեզ զերկիրն ,
եւ պատմեսցեն մեզ զհանգամանս ճա-
նապարհին ընդ որ ելանիցեմք անդր ,
23 եւ զքաղաքացն յորս մտանիցեմք ։ Եւ
հաճոյ թուեցաւ առաջի իմ բանն ․ եւ
առի ի ձէնջ երկոտասան այր , այր մի
24 ըստ ցեղի ։ Եւ գնացին ելին ի լեառնն ,
եւ հասին մինչեւ ի Ձորն ողկուզի , եւ
25 լրտեսեցին զնա ։ Եւ առին ի ձեռս իւր-
եանց ի պտղոյ երկրին , եւ իջին առ մեզ
եւ բերին մեզ լուր ․ ասեն , Բարի է
երկիրն զոր Տէր Աստուած տալոց է մեզ ։
26 Եւ ոչ կամեցայք ելանել , եւ հեստեցէք
27 բանին Տեառն Աստուծոյ [8]մերոյ ․ Եւ
տրտնջեցէք ի վրանս ձեր եւ ասացէք ,
Առ ատելութեան Տեառն եհան զմեզ
յերկրէն Եգիպտացւոց՝ մատնել զմեզ ի
ձեռս Ամորհացւոց , սատակել զմեզ ։
28 Արդ յո՞ ելանիցեմք ․ եւ եղբարք [9]ձեր
զանգիտեցուցին զսիրտս [9]ձեր եւ ասեն ,
Ազգ մեծ եւ բազում եւ զօրագոյն է քան
զմեզ , եւ քաղաքք մեծամեծք եւ պարս-
պաւորք մինչեւ յերկինս ․ այլ եւ [10]որ-
29 դիս սկայից՝՝ տեսաք մեք անդ ։ Եւ ա-
սացի ցձեզ , Մի՛ զանգիտիցէք եւ մի՛
30 զարհուրիք ի նոցանէ ․ Տէր Աստուած
[11]մեր որ երթայ առաջի երեսաց ձերոց ,
նա տայ պատերազմ ընդ նոսա փոխա-
նակ ձեր , ըստ ամենայնի զոր արար ձեզ
յերկրին Եգիպտացւոց առաջի աչաց ձե-
31 րոց ։ Եւ յանապատին յայսմիկ զոր տե-
սէք , զի սնոյց զքեզ Տէր Աստուած քո ,
որպէս սնուցանիցէ ոք զորդի իւր , ըստ
ամենայն ճանապարհին զոր գնացէք մին-
32 չեւ եկիք ի տեղիս յայս ։ Եւ ի բանիս
յայսմիկ ոչ հաւատացէք Տեառն Աստու-
33 ծոյ ձերոյ , Որ երթայ առաջի ձեր ի ճա-
նապարհիդ ընտրել ձեզ զտեղին , առաջ-
նորդել ձեզ հրով ի գիշերի , ցուցանել
ձեզ ճանապարհ ընդ որ գնայցէք , եւ
34 ամպով ի տուէ ։ Եւ լուաւ Տէր զձայն
բանիցն ձերոց , եւ բարկացեալ երդուաւ
35 եւ ասէ , Թէ տեսանիցէ ոք յարանցդ
յայդցանէ[12] զերկիրն բարի զոր երդուայ
36 տալ հարցն նոցա ․ Բայց Քաղէբ որդի
Յեփոնեայ , նա տեսցէ զնա , եւ նմա տաց
զերկիրն յոր եհաս եւ որդւոցն նորա ,
37 վասն յարելոյ նորա ի Տէր ։ Եւ ինձ բար-
կացաւ Տէր վասն ձեր եւ ասէ , Եւ դու
38 մի՛ մտցես անդր ։ Այլ Յեսու որդի Նաւ-
եայ սպասաւոր քո , նա մտցէ անդր ․
զնա զօրացո , զի նա ժառանգեցուսցէ
39 զնա Իսրայելի ։ Եւ մանկունք եւ որդիք
ձեր զորոց ասացէք թէ ի յափշտակու-
թիւն լինիցին , եւ ամենայն մանուկ մա-
տաղ որ ոչ գիտիցէ այսօր զբարի կամ
զչար , նոքա մտցեն անդր , եւ նոցա
տաց զնա , եւ նոքա ժառանգեսցեն զնա ։
40 Եւ դուք դարձարուք եւ չուեցէք յանա-
պատն ընդ ճանապարհ Կարմիր ծովուն ։
41 Եւ պատասխանի տուք ինձ եւ ասա-
ցէք , Մեղաք առաջի Տեառն Աստուծոյ
մերոյ ․ ելցուք մեք , տացուք պատե-
րազմ , որպէս պատուիրեաց մեզ Տէր Աս-
տուած մեր ․ եւ առեալ իւրաքանչիւր
զգործի պատերազմի իւրոյ՝ գումարե-
42 ցայք ելէք ի լեառնն ։ Եւ ասէ ցիս Տէր ,
Ասա ցնոսա , Մի՛ ելանէք եւ մի՛ մարտնչիք ,
զի չեմ ընդ ձեզ , գուցէ խորտակիցիք
43 առաջի թշնամեաց ձերոց ։ Եւ խօսեցայ
ընդ ձեզ , եւ ոչ լուարուք ինձ , եւ անց-
էք զբանիւ Տեառն , եւ անսաստեցէք
44 ելէք ի լեառնն ։ Եւ ելեալ Ամորհացին ,
որ բնակեալն էր ի լերինն յայնմիկ , ընդ-
դէմ ձեր՝ հալածեաց զձեզ , որպէս պա-
տիցի մեղու , եւ խոցոտեցին զձեզ ի
45 Սէիրայ մինչեւ ցՀերմա ։ Եւ նստեալ
լայիք առաջի Տեառն , եւ ոչ լուաւ Տէր
46 ձայնի ձերում , եւ ոչ անսաց ձեզ ։ Եւ
նստայք ի Կադէս աւուրս բազումս , որ-
չափ աւուրս երբեմն նստայք անդր ։

ԳԼ․ Բ

1 Եւ դարձաք չուեցաք յանապատն ընդ
ճանապարհ Կարմիր ծովուն , զոր օրինակ
խօսեցաւ Տէր ընդ իս , եւ պատեցաք
2 զՍէիր լերամբ աւուրս բազումս ։ Եւ
3 ասէ ցիս Տէր , Շատ լիցի ձեզ պատել
զլերամբդ ․ արդ դարձարուք ընդ կողմն
4 հիւսիսոյ ։ Եւ ժողովրդեանդ պատուէր
տուր եւ ասասցես , Դուք աւադիկ ան-

[1]Եբր․ մեզ [2]Եբր․ Տես [3]Եբր․ քո [4]Եբր․ քոց [5]Եբր․ ել, ժառանգեա [6]Եբր․ քոց քեզ [7]Եբր․ երկնչիցիս եւ մի՛ զանգիտիցես [8]Եբր․ ձերոյ [9]Եբր․ մեր [10]Եբր․ զորդիսն Ենակայ [11]Եբր․ ձեր

[12]Եբր․ յարանցդ այդոցիկ, յազգէ այտի չարէ ,

ցանէք առ սահմանօք եղբարց ձերոց՝
որդւոց Եսաւայ, որ բնակեալ են ի Սէիր.
եւ երկնչիցին ի ձէնջ, եւ զգուշանայցէք
5 յոյժ. Մի՛ գրգռիցիք ընդ նոսա ի պատե-
րազմ, զի ոչ տաց ձեզ յերկրէ նոցա եւ
ոչ քայլ մի ոտին. քանզի վիճակաւ ե-
6 տու Եսաւայ զլեառնն Սէիր։ Կերակուրս
գնեսջիք ի նոցանէ[1] եւ կերիջիք, եւ
ջուր չափով արծաթոյ առջիք ի նոցանէ
7 եւ արբջիք. Զի Տէր Աստուած [2]մեր
օրհնեաց զքեզ յամենայն գործս ձեռաց
քոց. [3]ծանիր զիարդ անցեր ընդ անա-
պատն մեծ եւ ահագին. ահա քառա-
սուն ամ Տէր Աստուած քո ընդ քեզ է,
եւ ոչ ինչ կարօտացար։

8 Եւ անցաք առ եղբարբք մերովք որդ-
ւովքն Եսաւայ բնակելովքն ի Սէիր, առ
ճանապարհաւն [4]Արաբացւոց յԵղովմայ",
եւ ի Գասիոնգաբերայ. եւ դարձեալ ան-
ցաք ընդ ճանապարհ անապատին Մո-
9 վաբու։ Եւ ասէ ցիս Տէր, Մի՛ թշնամա-
նայցիք ընդ Մովաբացիսն եւ մի՛ գրգռի-
ցէք ընդ նոսա պատերազմ. զի ոչ տաց
[5]ձեզ յերկրէն նոցա ի վիճակ. քանզի
որդւոցն Ղովտայ ետու [6]զՍէիր ի ժա-
10 ռանգութիւն։ Եւ Ոմմինքն նախ բնա-
կեալ էին ի նմա, ազգ մեծ եւ բազում
11 եւ [7]հզօր. Որպէս Ենակիմք ընդ Ռափա-
յինսն համարիցին," նոյնպէս եւ նոքա
իբրեւ զԵնակիմս. եւ Մովաբացիք ա-
12 նուանեն զնոսա Ոմմինս։ Եւ ի Սէիր նախ
բնակեալ էր Քոռեցին. եւ որդիքն Ե-
սաւայ կորուսին զնոսա, եւ սատակե-
ցին զնոսա յերեսաց իւրեանց, եւ բնա-
կեցան փոխանակ նոցա. զոր օրինակ
արար Իսրայէլ զերկիր ժառանգութեան
13 իւրոյ զոր ետ նոցա Տէր։ Եւ արդ արիք
չուեցէք եւ անցէք ընդ ձորն Զարեդ[8]։

14 Եւ աւուրք որչափ անկան մեզ ի գնալն
մեզ ի Կադեսբառնեայ մինչեւ անցաք
ընդ ձորն Զարեդ, երեսուն եւ ութ ամ.
մինչեւ անկաւ ամենայն ազգ արանց
պատերազմողաց ի բանակէ անտի, որպէս
15 երդուաւ նոցա [9]Աստուած։ Եւ ձեռն
[10]Աստուծոյ էր ի վերայ նոցա սատակել
զնոսա ի բանակէն, մինչեւ անկան։

16 Եւ եղեւ իբրեւ անկան ամենայն արք

պատերազմողք մեռեալք ի միջոյ ժո-
17 ղովրդեանն, Խօսեցաւ Տէր ընդ իս եւ
18 ասէ, Դու անցանես այսօր առ սահմա-
19 նօք Մովաբու [11]ի Սէիր, Եւ մօտ հասա-
նիցէք յորդիսն Ամոնայ, մի՛ թշնամա-
նայցիք ընդ նոսա, եւ մի՛ գրգռիցէք ընդ
նոսա պատերազմ. զի ոչ տաց ձեզ զեր-
կիր որդւոցն Ամոնայ ի վիճակ, քանզի
որդւոցն Ղովտայ ետու զնա վիճակաւ։
20 (Երկիր [12]որ Ռափնայ համարեսցի". քան-
զի նախ՝ [13]Ռափայինք բնակէին ի նմա,
եւ Ամոնացիք անուանեն զնոսա Զոմ-
21 զոմինս. Ազգ մեծ եւ բազում եւ [14]զօ-
րաւոր իբրեւ զԵնակիմսն. եւ կորոյս
զնոսա Տէր յերեսաց նոցա, եւ ժառան-
գեցին եւ բնակեցին փոխանակ նոցա.
22 Որպէս արար որդւոցն Եսաւայ բնակելոց
ի Սէիր, զոր օրինակ սատակեաց Տէր
զՔոռեցին յերեսաց նոցա, եւ ժառան-
գեցին եւ բնակեցին փոխանակ նոցա
23 մինչեւ ցայսօր։ Եւ Խեւացիքն որ բնա-
կեալ էին յԱսիրովթ մինչեւ ցԳազա. եւ
[15]Գամիրքն որ ելեալ էին ի Գամրաց"
սատակեցին զնոսա, եւ բնակեցան փո-
24 խանակ նոցա։) Արդ արիք չուեցէք եւ
անցէք ընդ ձորն Առնովնայ. ահա մատ-
նեցի ի ձեռս քո զՍեհոն արքայ Եսեբո-
նայ զԱմովրհացի. եւ զերկիր նորա սկսիր
ժառանգել, եւ գրգռել ընդ նմա պա-
25 տերազմ։ Յօրէ յայսմանէ [16]սկսիր տալ
զահ եւ զերկեւղ քո առաջի ամենայն
ազգաց որ են ի ներքոյ երկնից, զի որք
լսիցեն զանուանէ քումմէ՝ խռովեսցին,
եւ երկունք կալցին զնոսա յերեսաց քոց։

26 Եւ առաքեցի հրեշտակս յանապատէն
Կեդմովթայ առ Սեհոն արքայ Եսեբոնայ
27 բանիւք խաղաղութեան, եւ ասեմ, Ան-
ցից ընդ երկիր քո, զճանապարհայն գնա-
ցից, ոչ խոտորեցայց յաջ եւ ոչ յահեակ։
28 Կերակուր՝ արծաթոյ վաճառեսցես ինձ
եւ կերայց, եւ ջուր՝ արծաթոյ վաճա-
ռեսցես ինձ եւ արբից, բայց զի ոտիւք
29 եւեթ անցից. Որպէս արարին ինձ որ-
դիքն Եսաւայ բնակեալքն ի Սէիր, եւ
Մովաբացիքն բնակեալք [17]յԱրոյէր, մին-
չեւ անցից ընդ Յորդանան յերկիրն զոր
30 Տէր Աստուած տացէ մեզ։ Եւ ոչ կա-
մեցաւ Սեհոն արքայ Եսեբոնայ անցանել

[1] Եբրայեցին յաւելու, արծաթոյ [2] Եբր. քո [3] Եբր. գիտէ [4] Եբր. դաշտին՝ յԵղաթայ [5] Եբր. քեզ [6] Եբր. զԱր [7] Եբր. երկայնահասակ իբրեւ զԵնակիմսն. (11) Ընդ հսկայս համարէին [8] Եբրայեցին յաւելու, եւ անցաք ընդ ձորն Զարեդ [9] Եբր. Տէր [10] Եբր. Տեառն

[11] Եբր. ընդ Ար [12] Եբր. հսկայից համարէր [13] Այսինքն, հսկայք [14] Եբր. երկայնահասակ [15] Եբր. Կափթորացիքն որ ելեալ էին ի Կափթորայ [16] Եբր. սկսայց [17] Եբր. յԱր

մեզ առ նովաւ . զի խստացոյց Տէր Աս-
տուած [1]մեր զոգի նորա , եւ կարծրա-
ցոյց զսիրտ նորա , զի մատնեսցի ի ձեռս
31 քո յաւուրս յայսմիկ ։ Եւ ասէ ցիս Տէր ,
Ահա սկսեալ եմ մատնել առաջի երեսաց
քոց զՍեհոն [2]արքայ Եսեբոնի զԱմովրհա-
ցի՝ եւ զերկիրն նորա . սկսիր վիճակաւ
ժառանգել զերկիրն նորա ։
32 Եւ ել Սեհոն [2]արքայ Եսեբոնի՝ ընդդէմ
մեր , ինքն եւ ժողովուրդ իւր պատե-
33 րազմաւ ի Յասսա ։ Եւ մատնեաց զնա
Տէր Աստուած մեր ի ձեռս մեր , եւ հա-
րաք զնա եւ զորդիս նորա եւ զամենայն
34 ժողովուրդ նորա . Եւ յաղթեցաք ամե-
նայն քաղաքացն նորա ի ժամանակին
յայնմիկ , եւ սատակեցաք զամենայն
[3]քաղաքս նորա մի ըստ միոջէ , եւ զկա-
նայս նոցա եւ զմանկունս իւրեանց . եւ՝
35 ոչ թողաք ի նոցանէ ապրեալ . Բայց զի
զխաշինսնածաք յաւարի եւ զկապուտ
36 քաղաքաց զոր առաք ։ ՅԱրոյերայ որ է
առ եզերբ ձորոյն Առնովնայ , եւ զքա-
ղաքն որ է ի ձորն , մինչեւ ցսահմանս
Գաղաադու , ոչ էր քաղաք որ ապրեցաւ
ի մէնջ . այլ զամենայն մատնեաց Տէր
37 Աստուած մեր ի ձեռս մեր ։ Բայց յեր-
կիր որդւոցն Ամոնայ [4]յոր ոչ մերձեցաք ,
զամենայն արուարձանս ձորոյն Յաբովկայ ,
եւ զամենայն քաղաքսն լեռնա-
կանս , որպէս՝ պատուիրեաց մեզ Տէր
Աստուած մեր ։

Գլ . Դ

1 Եւ դարձաք ելաք ընդ ճանապարհն Բա-
սանու , եւ ել Ովգ արքայ Բասանու ընդ-
դէմ մեր , ինքն եւ ամենայն ժողովուրդ
2 նորա պատերազմաւ յԵդրային ։ Եւ ասէ
ցիս Տէր , Մի՛ երկնչիցիս ի նմանէ , զի
ի ձեռս քո մատնեցի զնա եւ զամենայն
ժողովուրդ նորա եւ զամենայն երկիր
նորա . եւ արասցես նմա որպէս արա-
րեր Սեհոնի արքայի Ամովրհացւոց որ
3 բնակեալ էր յԵսեբոն ։ Եւ մատնեաց [2]զնա
Տէր Աստուած մեր ի ձեռս մեր եւ զՈվգ
արքայ Բասանու եւ զամենայն ժողո-
վուրդն նորա . եւ հարաք զնա մինչ ոչ
4 թողուլ նմա զաւակ ։ Եւ յաղթեցաք ա-
մենայն քաղաքացն նորա ի ժամանակին
յայնմիկ . եւ ոչ էր քաղաք զոր ոչ ա-
ռաք ի նոցանէ . վաթսուն քաղաք զա-
մենայն շուրջ զգաւառաւն Արգովբայ ,
5 թագաւորին Ովգայ ի Բասան ։ Ամենայն
քաղաքք ամուրք բարձրապարիսպք
դրամբք եւ զոնափակօք . թող զքա-
ղաքսն արձակաքաղաքս [2]Փերեզացւոց
6 բազումս յոյժ ։ Եւ սատակեցաք զնոսա ,
որպէս արարաք զՍեհոն արքայ Եսեբո-
նի . եւ սատակեցաք զամենայն քաղաքսն
[5]մի ըստ միոջէ եւ զկանայս եւ զման-
7 կունս , եւ ոչ թողաք մազապուր ․՝ Եւ
զամենայն զանասուն եւ զկապուտ քա-
8 ղաքացն ածաք մեզ յաւար ։ Եւ առաք
ի ժամանակին յայնմիկ զերկիրն ի ձե-
ռաց երկուց թագաւորացն Ամովրհաց-
ւոց , որ էին յայնկոյս Յորդանանու , յԱռ-
9 նովնայ մինչեւ ցՀերմոն ։ Եւ [6]Փիւնի-
կեցիք անուանեցին զՀերմոնն Սանիովր ,
եւ Ամովրհացին անուանեաց զնա Սա-
10 նիր ։ Ամենայն քաղաքք [7]Միսովրայ եւ
ամենայն Գաղաադ եւ ամենայն Բասան ,
մինչեւ ցԵղքա , եւ ցԵդրային , քաղաքք
թագաւորութեան էին Ովգայ ի Բասան ։
11 Զի Ովգ միայն արքայ Բասանու մնաց
[8]յՌափայնոց անտի . եւ դահոյք նորա
դահոյք երկաթիք , եւ ահա է այն յամ-
րոցի որդւոցն Ամոնայ . ինն կանգուն եր-
կայնութիւն նորա եւ չորք կանգունք
լայնութիւն նորա , [9]սկայից կանգնով ։
12 Եւ զերկիրն զայն ժառանգեցաք ի ժա-
մանակին յայնմիկ յԱրոյերայ որ է առ ե-
զերբ ձորոյն Առնովնայ,[10]եւ զկէս ձորոյն՝
Գաղաադու եւ զքաղաքս նորա ետու
13 Ռուբենի եւ Գադայ . Եւ զաւելորդն Գա-
ղաադու եւ զամենայն Բասան , զթա-
գաւորութիւնն Ովգայ , ետու կիսոյ ցե-
ղին Մանասէի , զամենայն գաւառն Ար-
գովբայ եւ զամենայն Բասանն , որ եր-
14 կիր [11]Ռափայնոյն համարեցի։ Եւ Յայիր ,
որդի Մանասէի , ա՛ռ զամենայն գաւառն
Արգովբայ մինչեւ ցսահմանս Գարգասե-
ւայ եւ Ոմքատեայ . եւ անուանեաց [12]զնա
յիւր անուն զԲասան՝ Աւովթյայիր՝ , մին-
15 չեւ ցայսօր ժամանակի ։ Եւ Մաքիրայ
16 ետու զԳաղաադ ։ Եւ Ռուբենի եւ Գա-
դայ ետու ի Գաղաադէ մինչեւ ի ձորն

[1] Եբր. քո [2] Յեբր. [illegible] [3] Եբր. քաղաքս , զարս եւ զկանայս եւ զմանկունս. [4] Եբր. ոչ մերձեցար, յամենայն կողմն ձորոյն Յաբովկայ, եւ ի քաղաքսն լեռնականս եւ յամենայն յոր

[5] Եբր. զարս եւ զկանայս եւ զմանկունս ։ [6] Եբր. Սիդոնացիք [7] Այլընթ. դաշտին բարձու [8] Այլընթ. ի Հսկայից [9] Եբր. մարդոյ [10] Եբր. մինչեւ ի կէս լերինն [11] Այլընթ. Հսկայից [12] Եբր. զնոսա յիւր անուն Բասան-Աւովթ-Յայիր

Առնովնայ, ընդ մէջ ձորոյն՝ սահման
մինչեւ ցՅաբովկ, ձորն սահման որդ-
17 ւոցն Ամոնայ, Եւ [1]Արաբա, եւ Յորդա-
նան սահման է նմա՝՝ի Քեններեթայ մին-
չեւ ցծովն [2]Արաբայ՝ ծովն Աղի յԱսե-
ղովթայ յարեւելից Փասգայ՝՝։
18 Եւ պատուիրեցի ձեզ ի ժամանակին
յայնմիկ եւ ասեմ, Տէր Աստուած [3]մեր
ետ ձեզ զերկիրս զայս ի վիճակ. վառե-
ցարուք անցէք առաջի եղբարց ձերոց,
որդւոցն Իսրայելի, ամենայն զօրաւոր.
19 Բայց կանայք ձեր եւ մանկունք ձեր եւ
անասուն ձեր, գիտեմ զի անասուն բա-
զում է ձեր, բնակեսցեն ի քաղաքս ձեր
20 զոր ետու ձեզ, Մինչեւ զհանգուսցէ Տէր
[4]Աստուած մեր՝՝ զեղբարս ձեր, որպէս
եւ զձեզ, զի ժառանգեսցեն եւ նոքա
զերկիրն զոր Տէր Աստուած [3]մեր տացէ
նոցա յայնկոյս Յորդանանու։ Եւ դարձ-
ջիք այսրէն յիւրաքանչիւր ժառանգու-
թիւն իւր զոր ետու ձեզ։
21 Եւ Յեսուայ պատուիրեցի ի ժամանա-
կին յայնմիկ եւ ասեմ, Աչք [5]ձեր իսկ
տեսին զամենայն զոր արար Տէր Ա-
ստուած [3]քո ընդ երկուս թագաւորսն ընդ
այնոսիկ. նոյնպէս արասցէ Տէր ընդ ա-
մենայն թագաւորութիւնս յորոյ վերայ
22 գիմեսցես դու. Մի՛ զանգիտիցէք[6]. զի
Տէր Աստուած [3]մեր ինքնին պատերազ-
23 մեսցի փոխանակ ձեր։ Եւ աղաչեցի զՏէր
Աստուած ի ժամանակին յայնմիկ եւ ա-
24 սեմ, Տէր, Տէր, դու սկսար ցուցանել
ծառայի քում զսաստկութիւն քո եւ
զզօրութիւն քո, զձեռն հզօր եւ զբա-
զուկ բարձր. քանզի ո՞վ է Աստուած
յերկինս կամ յերկրի որ առնիցէ որպէս
դու [7]արարեր ըստ՝՝ զօրութեան քում։
25 Արդ անցեալ տեսից զերկիրն բարի որ
է յայնկոյս Յորդանանու, զլեառնն բա-
26 րի եւ [8]զերկրորդն Լիբանան՝՝։ Եւ ան-
տես արար զիս Տէր վասն ձեր, եւ ոչ
լուաւ ինձ. եւ ասէ ցիս Տէր, Շատ լիցի
քեզ, մի՛ եւս յաւելուցուս խօսել զբանդ
27 զայդ. Ել ի կատար [9]կոփածոյից, եւ հա-
յեցեալ աչօք քովք ընդ ծովակողմն եւ
ընդ հիւսիսի եւ ընդ հարաւ եւ ընդ ա-
րեւելս, տես աչօք քովք. քանզի ոչ

[1]Եբր. զդաշտն եւ զՅորդանան եւ զսահմանն
[2]Եբր. դաշտին, ծովն Աղի, ի ներքոյ Ասեդովթ-
Փասգայ ընդ Արեւելս [3]Եբր. ձեր [4]Յեբր.
[illegible] [5]Եբր. քո [6]Եբր[illegible], ի
նոցանէ [7]Եբր. արարեր ըստ գործոց եւ ըստ
[8]Եբր. զԼիբանան [9]Եբր. Փասգայի

28 անցանիցես ընդ այդ Յորդանան։ Եւ
պատուիրեա Յեսուայ եւ զօրացուցես
զնա, եւ մխիթարեսցես զնա. զի նա
անցցէ առաջի ժողովրդեանդ [4]խմոյ այ-
դորիկ, եւ նա ժառանգեցուսցէ զոցա
29 զերկիրն զոր տեսեր։ Եւ նստաք ի հո-
վիտն [10]մերձ ի տունն Փոգովրայ՝՝։

ԳԼ. Դ

1 Եւ այժմ, Իսրայէլ, լուր իրաւանց եւ
դատաստանաց զոր ես ուսուցանեմ [11]քեզ
այսօր առնել. զի կեցջիք, եւ մտանի-
ցէք ժառանգիցէք զերկիրն զոր Տէր Աս-
2 տուած [12]մեր տացէ ձեզ։ Մի՛ յաւելու-
ցուք ինչ ի բանն զոր ես պատուիրեմ
ձեզ, եւ մի՛ հատանիցէք ի նմանէ. պա-
հեսջիք զպատուիրանս Տեառն Աստու-
ծոյ [13]մերոյ զոր ես պատուիրեմ ձեզ։
3 Աչք ձեր տեսին զոր ինչ արար Տէր ընդ
Բեեղփեգովր. զի ամենայն մարդ որ չոգաւ
զհետ Բեեղփեգովրայ՝ սատակեաց զնա Տէր
4 Աստուած [14]մեր ի ձէնջ՝՝։ Բայց դուք որ
յարեցայք ի Տէր Աստուած ձեր, կեն-
դանի էք դուք ամենեքեան յաւուրս
5 յայսմիկ։ Տեսէք զի ուսուցի ձեզ զի-
րաւունս եւ զդատաստանս որպէս պա-
տուիրեաց ինձ Տէր[15] առնել զայն յերկ-
րին յոր դուք մտանիցէք ժառանգել զնա։
6 Եւ պահեսջիք եւ արասջիք, զի այն է
իմաստութիւն ձեր եւ հանճար առաջի
ամենայն ազգաց, որ լսիցեն զամենայն
իրաւունս զայսոսիկ եւ ասիցեն, Ահա
ժողովուրդ իմաստուն եւ հանճարեղ,
7 ազգս այս մեծ։ Քանզի ո՞վ իցէ ազգ
մեծ որոյ իցէ Աստուած մօտ [16]ի նոսա՝՝,
որպէս Տէր Աստուած մեր յամենայնի
8 որում կարդասցուք առ նա։ Եւ ո՞ր ազգ
մեծ որոյ իցեն իրաւունք եւ դատաստանք
արդարք, ըստ ամենայնի օրինացս այսո-
9 ցիկ զոր ես տամ այսօր առաջի ձեր։ Հայ-
եաց ի քեզ եւ զգոյշ լեր անձին քում
յոյժ. մի՛ մոռանայցես զամենայն բանս
զայսոսիկ զոր տեսին աչք քո, եւ մի՛
մերժեսցին ի սրտէ քումմէ զամենայն
աւուրս կենաց քոց. եւ խելամուտ ա-
րասցես որդւոց քոց եւ որդւոց որդւոց
10 քոց։ Զօրն յորում կացէք դուք ի Քորեբ
առաջի Տեառն Աստուծոյ ձերոյ [4]յաւուրն
եկեղեցւոյ՝՝, յորժամ ասաց ցիս Տէր, Թէ

[10]Եբր. յանդիման Բեթփոգովրայ [11]Եբր. ձեզ [12]Եբր.
հարցն ձերոց [13]Եբր. ձերոյ [14]Եբր. քո ի միջոյ քում-
մէ [15]Եբր[illegible], Աստուած իմ [16]Եբր. ի նա

Եկեղեցացս առ իս զժողովուրդդ, եւ
լուիցեն զպատգամս իմ զոր ուսուսցին
երկնչել յինէն զամենայն աւուրս որչափ
կենդանի իցեն զոքա ի վերայ երկրի,
11 եւ ուսուսցեն զորդիս իւրեանց։ Եւ մա-
տուցեալ կայիք դուք առ ստորոտով լե-
րինն. եւ լեառնն բորբոքէր հրով մին-
չեւ յերկինս, եւ խաւար եւ մէգ եւ մա-
12 ռախուղ էր։ Եւ խօսեցաւ Տէր ընդ ձեզ
ի միջոյ հրոյն. զձայն պատգամացն լուա-
րուք դուք. եւ նմանութիւն ինչ ոչ տե-
13 սէք, բայց միայն զբարբառն։ Եւ պատ-
մեաց ձեզ զուխտն իւր զոր պատուի-
րեաց ձեզ առնել, զտասն պատգամսն,
եւ գրեաց զնոսա ի վերայ երկուց քա-
14 րեղէն տախտակաց։ Եւ պատուիրեաց
[1]ինձ ի ժամանակին յայնմիկ ուսուցա-
նել իրաւունս ձեզ եւ դատաստանս, եւ
առնել ձեզ զնոսա յերկրին յոր դուք
մտանիցէք ժառանգել զնա։
15 Եւ զգուշացարուք յոյժ անձանց ձերոց.
զի նմանութիւն ինչ ոչ տեսէք յաւուրն
յայնմիկ յորում խօսեցաւ ընդ ձեզ Տէր
16 ի Քորեբ լերինն ի միջոյ հրոյն. Մի՛ ա-
նօրինիցիք եւ առնիցէք ձեզ դրօշեալ,
նմանութիւն ամենայն պատկերի, նմա-
17 նութիւն արուական կամ իգական, նմա-
նութիւն ամենայն անասնոց որ իցեն
յերկրի, նմանութիւն ամենայն հաւու
թռչնոց որ թռչիցին ի ներքոյ երկնից,
18 Նմանութիւն ամենայն սողնոց որ սողի-
ցին ի վերայ երկրի, նմանութիւն ամե-
նայն ձկանց որ իցեն ի ջուրս ի ներքոյ
19 երկրի։ Եւ մի՛ հայեցեալ ընդ երկինս տե-
սանիցես զարեգակն եւ զլուսին եւ զաս-
տեղս եւ զամենայն զարդ երկնից, եւ
մոլորեալ երկիր պագանիցես նոցա եւ
պաշտիցես զնոսա, զոր բաժանեաց Տէր
Աստուած ամենայն ազգաց որ ի ներքոյ
20 երկնից։ Եւ զձեզ ա՛ռ [2]ի ձեռն Աստուած",
եւ եհան զձեզ յերկաթեղէն հնոցէն յԵ-
գիպտոսէ, լինել նմա ժողովուրդ [3]վիճա-
կաւ, որպէս եւ յաւուր յայսմիկ։
21 Եւ Տէր բարկացաւ ինձ վասն [4]բանիցն
ասացելոց ի ձէնջ", եւ երդուաւ զի մի՛
անցից ընդ այդ Յորդանան, եւ զի մի՛
մտանիցեմ [5]յերկիրն զոր Տէր Աստուած
22 քո տացէ քեզ ի ժառանգութիւն։ Եւ
արդ ես աւասիկ մեռանիմ յերկրիս յայս-
միկ, եւ ոչ անցանեմ ընդ Յորդանան.

[1] Եբր. ինձ Տէր [2] Եբր. Տէր [3] Այսինքն, սեպհական
[4] Եբր. բանից ձերոց [5] Եբր. յերկիրն բարի

բայց դուք անցանէք եւ ժառանգէք զեր-
23 կիրն բարի։ Զգոյշ լերուք դուք մո-
ռանայցէք զուխտն Տեառն Աստուծոյ
[6]մերոյ զոր ուխտեաց ընդ ձեզ, եւ առ-
նիցէք ձեզ դրօշեալ, նմանութիւն յա-
մենայնէ յորոց պատուիրեաց քեզ Տէր
24 Աստուած քո։ Զի Տէր Աստուած քո
հուր ծախիչ է, Աստուած նախանձոտ։
25 Եւ եթէ ծնանիցիս որդիս եւ [7]զորդիս
որդւոց քոց", եւ յամիցէք յերկրին, եւ
անօրինիցիք եւ առնիցէք դրօշեալ նմա-
նութիւն ամենայնի, եւ առնիցէք չար
առաջի Տեառն Աստուծոյ ձերոյ բարկա-
26 ցուցանել զնա, Ունիմ ձեզ վկայս այսօր
զերկինս եւ զերկիր, զի կորստեամբ
կորնչիցիք յերկրէն յոր դուք անցանէք
ընդ Յորդանան ժառանգել զնա. եւ ոչ
բազմացուցանիցէք զժամանակս աւուրց
ի վերայ նորա, այլ սատակելով սատա-
27 կեսջիք։ Եւ ցրուեսցէ Տէր զձեզ ընդ
ամենայն ազգս, եւ մնասջիք սակաւք
թուով ի մէջ ազգացն յորս տարցի զձեզ
28 Տէր անդր։ Եւ պաշտիցէք անդ զաս-
տուածս օտարս, զձեռագործս մարդկան,
զփայտեղէնս եւ զքարեղէնս, որք ոչ
տեսանիցեն եւ ոչ լսիցեն եւ ոչ ուտիցեն
29 եւ ոչ հոտոտիցեն։ Եւ խնդրիցէք անդ
զՏէր Աստուած ձեր, եւ գտանիցէք յոր-
ժամ խնդրիցէք զնա յամենայն սրտէ
30 ձերմէ եւ յամենայն անձնէ ձերմէ։ Ի նե-
ղութեան ձերում, [8]եւ գտանիցեն զքեզ
ամենայն բանքս այսոքիկ ի վախճանի
աւուրց, [9]եւ դարձցիս դու առ Տէր Ա-
31 ստուած քո, եւ լուիցես ձայնի նորա, Զի
Աստուած ողորմած է[10], ոչ թողցէ զքեզ
եւ ոչ սատակեսցէ զքեզ. եւ ոչ մոռասցի
զուխտ հարցն քոց զոր երդուաւ նոցա։
32 Հարցէք զաւուրսն զառաջինս զեղեալս
յառաջագոյն քան զձեզ, յօրէ յորմէ հաս-
տատեաց Աստուած մարդ ի վերայ երկ-
րի, ի ծագաց երկնից մինչեւ ի ծագս
երկնից, եթէ եղեա՞լ իցէ ըստ բանիս
մեծի այսորիկ, եթէ լուեա՞լ իցէ լուր
33 այսպիսի. Եթէ լուեա՞լ իցէ ազգի զձայն
Աստուծոյ [11]կենդանւոյ բարբառելոյ ի մի-
ջոյ հրոյ, որպէս լուար դու եւ կեցեր.
34 Եթէ յօժարեա՞լ իցէ Աստուծոյ մտանել
առնուլ իւր ազգ ի միջոյ ազգի, փոր-
ձութեամբ եւ նշանօք եւ արուեստիւք

[6] Եբր. ձերոյ [7] Եբր. որդիս որդւոց [8] Այսինքն յոր-
ժամ [9] Այսինքն՝ եթէ [10] Եբրայեցին յաւելու,
Տէր Աստուած քո [11] Եբր. չունի

և պատերազմաւ, հզօր ձեռամբ և
բարձր բազկաւ և մեծամեծ տեսլեամբք,
ըստ ամենայնի զոր արար Տէր Աստուած
[1]մեր յԵգիպտոս յանդիման քո իսկ տե-
35 սանելով: Զի գիտասցես թէ Տէր նա է
Աստուած, և չիք այլ ոք բաց ի նմանէ:
36 Յերկնից լսելի եղեւ բարբառ նորա խրա-
տել զքեզ, և յերկրի եցոյց քեզ զհուր
իւր զմեծ, և զպատգամս նորա լուար
37 ի միջոյ հրոյ: Վասն սիրելոյ նորա զհարսն
քո, և ընտրեաց զզաւակ նոցա յետ
նոցա, [2]զձեզ քան զամենայն ազգս," և
եհան զքեզ ինքնին զօրութեամբ իւրով
38 մեծաւ յԵգիպտոսէ, Սատակել [2]քեզ
զազգս մեծամեծս և հզօրագոյնս քան
զքեզ յերեսաց քոց, տանել զքեզ և տալ
քեզ զերկիր նոցա ի ժառանգութիւն,
39 որպէս ունիս իսկ այսօր: Եւ ծանիցես
այսօր և դարձցիս մտօք, զի Տէր [2]Աս-
տուած քո", նա է Աստուած յերկինս ի
վեր և յերկիր ի խոնարհ և չիք այլ ոք
40 բաց ի նմանէ: Եւ պահեսցես զիրաւունս
նորա և զպատուիրանս նորա զոր ես
պատուիրեմ քեզ այսօր, զի բարի լինի-
ցի քեզ և որդւոց քոց յետ քո, և եր-
կայնակեաց լինիցիս յերկրին զոր Տէր
[3]Աստուած տացէ քեզ զամենայն աւուրս:
41 Յայնժամ զատոյց Մովսէս երիս քա-
ղաքս յայնկոյս Յորդանանու յարեւելից
42 կողմանէ, Փախչել անդր սպանողին որ
ոք սպանանիցէ զընկեր իւր և ոչ գիտու-
թեամբ, և ինքն ոչ ատեայր զնա յերէկն
և յեռանդն, անկցի ի մի ի քաղաքացն
43 այնոցիկ և կեցցէ: ԶԲոսոր յանապա-
տին, ի դաշտին յերկրին Ռուբենի, և
զՌամովթ ի Գաղաադ՝ զԳադայ, և
զԳաղոմն ի Բասան՝ զՄանասէի:
44 Եւ այս օրէն է զոր ետ Մովսէս առաջի
45 որդւոցն Իսրայելի: Եւ այս են վկայու-
թիւնք և իրաւունք և դատաստանք
զոր խօսեցաւ Մովսէս ընդ որդիսն Իս-
րայելի յելանել նոցա յերկրէն Եգիպտաց-
46 ւոց, Յայնկոյս Յորդանանու, ի ձորն որ
է [4]մերձ ի տունն Փոգովրայ", յերկրին
Սեհոնի արքայի Ամովրհացւոց որ բնա-
կեալ էր յԵսեբոն, զորս եհար Մովսէս
և որդիքն Իսրայելի յելանել իւրեանց
47 յերկրէն Եգիպտացւոց: Եւ ժառանգեցին
զերկիրն նորա, և զերկիր Ովգայ թա-
գաւորին Բասանու, զերկուց թագաւո-
րացն Ամովրհացւոց որ էին յայնկոյս Յոր-
48 դանանու ընդ արեւելս, ՅԱրոյերայ որ
է առ եզերբ ձորոյն Առնովնայ, մինչեւ
49 ցլեառնն [5]Սեհոնի՝ որ է Հերմոն, Զամե-
նայն զԱրաբա" որ է յայնկոյս Յորդանա-
նու ընդ արեւելս, մինչեւ ցծովն [6]Արա-
բացւոց ի ներքոյ Ասեդովթայ կոփածոյն":

ԳԼ. Ե

1 Եւ կոչեաց Մովսէս զամենայն Իսրայէլ
և ասէ ցնոսա, Լուր, Իսրայէլ, զիրա-
ւունս և զդատաստանս զոր ես խօսիմ
յականջս ձեր յաւուր յայսմիկ, և ուս-
ջիք զնոսա և զգոյշ լինիջիք առնել զնո-
2 սա: Տէր Աստուած մեր ուխտեաց [7]ձեզ
3 ուխտ ի Քորեբ: Ոչ եթէ [8]հարցն ձերոց"
ուխտեաց Տէր զուխտն զայն, այլ [9]ձեզ,
և դուք ամենեքին կենդանի էք այ-
4 սօր": Դէմ յանդիման խօսեցաւ Տէր ընդ
5 ձեզ ի լերինն ի միջոյ հրոյն. (Եւ ես
կացի ի մէջ Տեառն և ձեր ի ժամանա-
նակին յայնմիկ, պատմել ձեզ զպատ-
գամսն Տեառն. զի զարհուրեցայք յերե-
սաց հրոյն և ոչ ելէք ի լեառնն,) ասէ,
6 Ես եմ Տէր Աստուած քո որ հանի
զքեզ յերկրէն Եգիպտացւոց, ի տանէ
ծառայութեան:
7 Մի՛ լինիցին քեզ աստուածք օտարք
առաջի աչաց իմոց:
8 Եւ մի՛ առնիցես դու քեզ դրօշեալ,
և մի՛ զնմանութիւն ամենայնի որ ինչ
յերկինս ի վեր, և որ ինչ յերկրի ի խո-
նարհ, և որ ինչ ի ջուրս ի ներքոյ երկ-
9 րի. Մի՛ երկիր պագանիցես նոցա և մի՛
պաշտեսցես զնոսա. զի ես եմ Տէր Աս-
տուած քո, Աստուած նախանձոտ, հա-
տուցանեմ զմեղս հարանց որդւոց իւր-
եանց, յերիս և ի չորս ազգս ատելեաց
10 իմոց. Եւ առնեմ ողորմութիւն ի հա-
զար ազգս սիրելեաց իմոց, և որոց պա-
հիցեն զհրամանս իմ:
11 Մի՛ առնուցուս զանուն Տեառն Աս-
տուծոյ քո ի վերայ սնոտեաց. զի ոչ
սրբեսցէ Տէր Աստուած քո զայն որ առ-
նուցու զանուն նորա ի վերայ սնոտեաց:
12 Զգուշասջիր աւուրն շաբաթու սրբել
զնա, որպէս և պատուիրեաց քեզ Տէր

[1]Եբր. ձեր [2]Յեբր. դոխաւէ [3]Եբր. Աստուած քո
[4]Եբր. յանդիման Բեթփեգովրայ

[5]Եբր. Սիոնի որ է Հերմոն, (49) Եւ զամենայն զդաշտն [6]Եբր. դաշտին ի ներքոյ Ասեդովթ-փասգայ [7]Եբր. ընդ մեզ [8]Եբր. ընդ հարս մեր [9]Եբր. ընդ մեզ, մեզ իսկ ամենեցուն որ աստ այսօր կենդանի եմք

13 Աստուած քո ։ Զվեց օր գործեսցես եւ
14 արասցես զամենայն գործ քո . Յաւուրն
եւթներորդի շաբաթ Տեառն Աստուծոյ
քո . մի՛ գործեսցես ի նմա զամենայն գործ
քո , դու եւ ուստր քո եւ դուստր քո
եւ ծառայ քո եւ աղախին քո , եզն քո
եւ էշ քո եւ ամենայն անասուն քո , եւ
եկն որ ի ներքոյ դրանց քոց . զի հան-
գիցէ ծառայն քո եւ աղախին քո որպէս
15 եւ դու . Եւ յիշեսցես դու զի ծառայ էիր
յերկրին Եգիպտացւոց , եւ եհան զքեզ
Տէր Աստուած քո անտի հզօր ձեռամբ
եւ բարձր բազկաւ . վասն այսորիկ պա-
տուիրեաց քեզ Տէր Աստուած քո պա-
հել զօրն շաբաթուց [1]եւ սրբել զնա"։
16 Պատուեա զհայր քո եւ զմայր քո,
որպէս պատուիրեաց քեզ Տէր Աստուած
քո , զի բարի լինիցի քեզ , եւ երկայնա-
կեաց լինիցիս ի վերայ երկրին զոր Տէր
Աստուած քո տացէ քեզ ։
17 Մի՛ սպանանիցես ։
18 Մի՛ շնայցես ։
19 Մի՛ գողանայցես ։
20 Մի՛ վկայիցես զընկերէ քումմէ վկա-
յութիւն սուտ ։
21 Մի՛ ցանկանայցես կնոջ ընկերի քո ,
եւ մի՛ ցանկանայցես տան ընկերի քո ,
եւ մի՛ անդոյ նորա , եւ մի՛ ծառայի
նորա , եւ մի՛ աղախնոյ նորա , եւ մի՛
եզին նորա , եւ մի՛ իշոյ նորա , [1]եւ մի՛
ամենայն անասնոյ նորա," եւ մի՛ ամե-
նայնի զինչ ընկերի քո իցէ ։
22 Զայս պատգամս խօսեցաւ Տէր ընդ
ժողովրդեանն ձերում ի լերինն ի միջոյ
հրոյն , ուր խաւարն եւ մէգ եւ մառա-
խուղ էր , մեծաւ բարբառով , եւ ոչ եւս
յաւել. եւ գրեաց զնոսա ի վերայ երկուց
քարեղէն տախտակացն եւ ետ ցիս ։
23 Եւ եղեւ իբրեւ լուայք զբարբառն ի մի-
ջոյ [2]հրոյն , եւ լեառնն բորբոքեալ էր
հրով , եւ մատուցեալ առ իս իշխանաց
ցեղիցն ձերոց եւ ծերակուտին ձերոյ՝
24 ասէին , Ահա եցոյց մեզ Տէր Աստուած[3]
զփառս իւր եւ զմեծութիւն իւր , եւ
զբարբառ նորա լուաք ի միջոյ հրոյ .
յաւուր յայսմիկ տեսաք եթէ խօսիցի
25 Աստուած ընդ մարդոյ եւ կեցցէ ։ Եւ
արդ՝ [4]մի՛ մեռցուք , զի մի՛" սատակեսցէ
զմեզ հուրս այս մեծ . եթէ յաւելուցումք
մեք լսել զձայն Տեառն Աստուծոյ մերոյ

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. խաւարին [3] Եբր. յաւելու, մեր [4] Եբր. ընդէ՞ր մեռցուք, զի

26 միւսանգամ , եւ մեռանիցիմք ։ Զի ո՞
ոք մարմին իցէ որ լուաւ զձայն Աստու-
ծոյ կենդանւոյ բարբառելոյ ի միջոյ հրոյ
27 որպէս մեքս , եւ կեցցէ ։ Մատիր դու
եւ լուր զոր ինչ ասիցէ Տէր Աստուած
մեր , եւ դու խօսեսցիս ընդ մեզ զա-
մենայն ինչ զոր խօսիցի Տէր Աստուած
մեր ընդ քեզ , եւ լուիցուք եւ արասց-
28 ցուք ։ Եւ լուաւ Տէր զբարբառ բանիցն
ձերոց խօսելոյ ընդ իս , եւ ասէ ցիս
Տէր , Լուայ զբարբառ բանից ժողո-
վրդեանն զոր խօսեցան ընդ քեզ . ուղիղ
29 խօսեցան զամենայն ։ Ո՛ տացէ լինել
այնպէս սրտից նոցա ի նոսա՝ երկնչել
յինէն եւ պահել [5]զպատուիրանս իմ զա-
մենայն աւուրս , զի բարի լինիցի նոցա
30 եւ որդւոց նոցա յաւիտեան ։ Արդ եկեղ
սաս ցնոսա , Դարձարուք դուք [6]ի տունս
31 ձեր ։ Եւ դու աստ կաց առ իս , եւ խօ-
սեցայց ընդ քեզ [5]զպատուիրանս եւ զի-
րաւունս եւ զդատաստանս զոր ուսու-
ցանիցես նոցա , եւ արասցեն յերկրին զոր
ես տաց նոցա ի ժառանգութիւն ։
32 Զգոյշ լերուք առնելոյ որպէս պա-
տուիրեաց [7]քեզ Տէր Աստուած քո , եւ
մի՛ խոտորիցիս" յաջ եւ մի՛ յահեակ ։
33 Ըստ ամենայն ճանապարհին զոր պա-
տուիրեաց [8]քեզ Տէր Աստուած մեր գնալ,
զի հանգուսցէ զքեզ եւ բարի արասցէ
քեզ", եւ երկայնօրեայք լինիցիք յերկ-
րին զոր ժառանգիցէք ։

## ԳԼ . Զ

1 Եւ այս են պատուիրանք եւ իրաւունք
եւ դատաստանք զոր պատուիրեաց ձեզ
Տէր Աստուած [9]մեր , ուսուցանել զձեզ՝
առնել այնպէս յերկրին յոր դուք մտա-
2 նիցէք ժառանգել . Զի [10]երկնչիցիք ի
Տեառնէ Աստուծոյ [11]մերմէ , պահել զա-
մենայն իրաւունս նորա եւ զպատուիրանս
նորա զոր ես պատուիրեմ [12]ձեզ այսօր",
դու եւ որդիք քո եւ որդիք որդւոց քոց,
զամենայն աւուրս կենաց քոց , զի եր-
3 կայնօրեայք լինիցիք ։ Եւ լուր , Իսրայէլ ,
եւ զգոյշ լեր առնելոյ , զի բարի լինիցի
քեզ եւ բազմանայցէք յոյժ , որպէս խօս-
տացաւ Աստուած հարցն քոց տալ քեզ

[5] Եբր. զամենայն պատուիրանս [6] Եբր. ի վրանս
[7] Եբր. ձեզ Տէր Աստուած ձեր. և մի՛ խոտորիցիք
[8] Եբր. ձեզ Տէր Աստուած ձեր գնալ, զի կեցջիք
եւ բարի լինիցի ձեզ [9] Եբր. ձեր [10] Եբր.
երկնչիցիս [11] Եբր. քումմէ [12] Եբր. քեզ

զերկիրն որ բղխէ զկաթն եւ զմեղր։ [1]Այս
են իրաւունք եւ դատաստանք զոր պա-
տուիրեաց Մովսէս որդւոցն Իսրայելի
յանապատին, յելանել նոցա յերկրէն
Եգիպտացւոց։"
4 Լուր, Իսրայէլ, Տէր Աստուած մեր՝ Տէր
5 մի է։ Եւ սիրեսցես զՏէր Աստուած քո
յամենայն սրտէ քումմէ եւ յամենայն
անձնէ քումմէ եւ յամենայն զօրութենէ
6 քումմէ։ Եւ եղիցին պատգամքս այս-
քիկ զոր ես պատուիրեմ քեզ այսօր՝ ի
7 սրտի [2]քում եւ յանձին քում. Եւ խրա-
տուսցես" զայս որդւոց քոց, եւ խօսես-
ցիս սոքօք ի նստել ի տան եւ ի գնալ ի
ճանապարհի եւ ի ննջել եւ ի յառնել.
8 Եւ արկցես զսոսա նշան ի ձեռին քում,
եւ եղիցի [3]անշարժ առաջի աչաց քոց.
9 Եւ գրեսցես զնոսա ի վերայ սեմոց տանց
քոց եւ ի դրունս քո։
10 Եւ եղիցի յորժամ տանիցի զքեզ Տէր
Աստուած քո յերկիրն զոր երդուաւ [1]Տէր
հարցն քոց Աբրահամու եւ Իսահակայ
եւ Յակոբայ՝ տալ քեզ քաղաքս մեծա-
11 մեծս եւ գեղեցիկս զոր ոչ շինեցեր, Եւ
տունս լի ամենայն բարութեամբ զոր
ոչ լցեր, եւ ջրհորս փորեալս զոր ոչ
փորեցեր, եւ այգիս եւ ձիթենիս զորս
ոչ տնկեցեր, եւ ուտիցես եւ յագիցես,
12 Զգոյշ լինիջիր անձին քում, գուցէ մո-
ռանայցես զՏէր [1]Աստուած քո" որ եհան
զքեզ յերկրէն Եգիպտացւոց ի տանէ ծա-
13 ռայութեան։ Ի Տեառնէ Աստուծոյ քում-
մէ երկիցես եւ զնա միայն պաշտեսցես,
[1]եւ ի նա յարեսցիս" եւ յանուն նորա
14 երդնուցուս։ Մի՛ երթայցէք զհետ աս-
տուածոց օտարաց, եւ զհետ աստուածոց
15 ազգացն որ շուրջ զձեւք իցեն. Զի Աս-
տուած նախանձոտ, Տէր Աստուած
քո ի միջի քում. գուցէ բարկացեալ
սրտմտիցի Տէր Աստուած քո սատակել
զքեզ յերեսաց երկրէ։
16 Մի՛ փորձեսցես զՏէր Աստուած քո
17 որպէս փորձեցէք ի Փորձութեանն։ Պա-
հելով պահեսցես զպատուիրանս Տեառն
Աստուծոյ քո, զվկայութիւնս եւ զիրա-
18 ւունս զոր պատուիրեաց քեզ։ Եւ ա-
րասցես զբարին եւ զհաճոյն առաջի
Տեառն [1]Աստուծոյ քո", զի քեզ բարի
լինիցի, եւ մտցես եւ ժառանգեսցես
զերկիրն բարի զոր երդուաւ Տէր հարցն

[1] ՅԵբր. պակասէ [2] Եբր. քում. (7) Եւ յեղյե-
ղեսցես [3] Եբր. գրապանակ

19 [4]մերոց, Հալածել զամենայն թշնամիս
յերեսաց քոց, որպէս եւ խօսեցաւ[5]։
20 Եւ եղիցի յորժամ հարցանիցէ զքեզ
վաղիւ որդին քո եւ ասիցէ, Զի՞նչ են
վկայութիւնքն եւ իրաւունք եւ դատաս-
տանք զոր պատուիրեաց Տէր Աստուած
21 մեր [6]մեզ. Եւ ասասցես ցորդին քո,
Ծառայք էաք Փարաւոնի յԵգիպտոս, եւ
հան զմեզ Տէր Աստուած անտի հզօր
22 ձեռամբ [1]եւ բարձր բազկաւ". Եւ ետ
Տէր նշանս եւ արուեստս մեծամեծս եւ
չարաչարս յերկրին Եգիպտացւոց, ի Փա-
23 րաւոն եւ ի տուն նորա առաջի մեր. Եւ
զմեզ եհան անտի, զի ածցէ այսր տալ
մեզ զերկիրս զայս զոր երդուաւ տալ
24 հարցն մերոց։ Եւ պատուիրեաց մեզ
Տէր առնել զամենայն իրաւունս զայսո-
սիկ, երկնչել ի Տեառնէ Աստուծոյ մեր-
մէ, զի բարի լիցի մեզ զամենայն ա-
25 ւուրս, զի կեցցուք որպէս եւ այսօր։ Եւ
[7]ողորմութիւն եղիցի մեզ, եթէ զգու-
շասցուք առնել զամենայն պատուիրանս
զայսոսիկ առաջի Տեառն Աստուծոյ մե-
րոյ, որպէս եւ պատուիրեաց մեզ։

## ԳԼ. Է

1 Եւ եթէ տարցի զքեզ Տէր Աստուած քո
յերկիրն յոր դու մտանիցես ժառանգել,
եւ բարձցէ [8]զազգսն մեծամեծս եւ զբա-
զումս" յերեսաց քոց, զՔետացին եւ
զԳերգեսացին եւ զԱմովրհացին եւ զՔա-
նանացին եւ զՓերեզացին եւ զԽեւացին
եւ զՅեբուսացին, եւթն ազգս մեծամեծս
2 եւ զօրաւորս քան [9]զձեզ, Եւ մատնես-
ցէ զնոսա Տէր Աստուած քո ի ձեռս քո,
հարցես զնոսա, եւ նզովելով նզովեսցես
զնոսա. մի՛ դնիցես ընդ նոսա ուխտ,
3 եւ մի՛ ողորմեսցիս նոցա. Եւ մի՛ առ-
նիցէք խնամութիւն ընդ նոսա. զդուստր
քո մի՛ տայցես ուստեր նորա, եւ զդուստր
4 նորա մի՛ առնուցուս ուստեր քում. Զի
մի՛ ապստամբեցուցանիցէ զորդին քո յի-
նէն, եւ պաշտիցէ զաստուածս օտարս,
եւ բարկասցի սրտմտութեամբ Տէր ի
ձեզ, եւ սատակեսցէ [9]զձեզ վաղվաղակի։
5 Այլ այսպէս արասջիք նոցա. զբագինս
նոցա կործանեսջիք, եւ զարձանս նոցա
փշրեսջիք, եւ [10]զանտառս նոցա կոտո-
րեսջիք, եւ զդրօշեալս նոցա այրեսջիք
6 հրով։ Զի ժողովուրդ սուրբ ես դու Տեառն

[4] Եբր. քոց [5] Եբրայեցին յաւելու, Տէր [6] Եբր.
ձեզ [7] Եբր. արդարութիւն [8] Եբր. ազգս
մեծամեծս [9] Եբր. զքեզ [10] Տե՛ս Ելից ԼԴ. 13։

Աստուծոյ քում. եւ զքեզ ընտրեաց Տէր
Աստուած քո լինել նմա ժողովուրդ սեպ-
հական քան զազգս ամենայն որ ի վերայ
7 երեսաց երկրի։ Ոչ զի բազում էք դուք
քան զամենայն ազգս՝ հաճեցաւ Տէր ընդ
ձեզ եւ ընտրեաց զձեզ, զի դուք սա-
8 կաւաւոր էք քան զամենայն ազգս. Այլ
վասն սիրելոյ զձեզ Տեառն եւ պահելոյ
զերդումնն զոր երդուաւ հարցն ձերոց՝
եհան զձեզ Տէր հզօր ձեռամբ [1]եւ բարձր
բազկաւ", եւ փրկեաց [2]զձեզ ի տանէ
ծառայութեան, ի ձեռաց Փարաւոնի ար-
9 քային Եգիպտացւոց։ Եւ ծանիցես զի
Տէր Աստուած քո նա է Աստուած, Աս-
տուած հաւատարիմ, որ պահէ զուխտ
եւ զողորմութիւն սիրելեաց իւրոց, եւ
որոց պահեն զպատուիրանս նորա՝ ի հա-
10 զար ազգ. Եւ հատուցանէ ատելեաց
իւրոց յանդիման սատակել զնոսա. եւ ոչ
յամեցուսցէ յատելեաց, այլ յանդիման
11 հատուսցէ նոցա։ Եւ պահեսցես զպա-
տուիրանս եւ զիրաւունս եւ զդատաս-
տանս զոր [3]ես պատուիրեմ քեզ առնել։
12 Եւ եղիցի յորժամ լուիցէք զամենայն
իրաւունս զայսոսիկ եւ պահիցէք եւ առ-
նիցէք զնոսա, պահեսցէ քեզ Տէր Աս-
տուած քո զուխտն եւ զողորմութիւն
13 որպէս երդուաւ հարցն [4]մերոց, Եւ սի-
րեսցէ զքեզ եւ օրհնեսցէ զքեզ. եւ բազ-
մացուսցէ զքեզ. եւ օրհնեսցէ զծնունդս
որովայնի քո եւ զպտուղ երկրի քո, զցո-
րեան քո եւ զգինի քո եւ զեւղ քո, զան-
դեայս արջառոց քոց եւ զհօտս ոչխա-
րաց քոց յերկրին զոր երդուաւ Տէր
14 հարցն քոց տալ զնա քեզ։ Օրհնեալ լի-
ցիս դու քան զազգս ամենայն. մի՛ լիցի
[5]ի ձեզ անծնունդ եւ մի՛ ամուլ, եւ մի՛
15 յանասունս քո։ Եւ բարձցէ ի քէն Տէր
զամենայն ախտ, եւ զամենայն ցաւս
չարաչարս Եգիպտացւոցն [1]զորս տեսերն
եւ" զորս գիտացեր. եւ մի՛ ածցէ զնոսա
ի վերայ քո, այլ ածցէ զնոսա [1]ի վերայ
թշնամեաց քոց եւ" ի վերայ ամենայն
16 ատելեաց քոց։ Եւ [6]կերիցես զամենայն
զկապուտ ազգացն" զոր Տէր Աստուած
քո տացէ քեզ. եւ մի՛ խնայեսցէ ակն
քո ի նոսա, եւ ոչ պաշտեսցես զդիս նո-
17 ցա, զի [7]խոչ է այն քեզ։ Ապա թէ ա-
սիցես ի մտի քում, զի Բազում է ազգն

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. զքեզ [3] Եբր. ես այսօր
[4] Եբր. քոց [5] Եբր. ի քեզ [6] Եբր. սպառեսցես զամենայն ազգս [7] Կամ, որոգայթ

այն քան զիս, զիա՞րդ կարացից սատա-
18 կել զնոսա. Մի՛ երկնչիցիս ի նոցանէ,
յիշելով յիշեսցես զոր ինչ արար Տէր
Աստուած քո ընդ Փարաւոն եւ [1]ընդ ծա-
ռայս նորա եւ" ընդ ամենայն Եգիպտա-
19 ցիսն, Զփորձանս մեծամեծս զոր տեսին
աչք քո, զնշանս եւ զարուեստս մեծա-
մեծս, զձեռնն հզօր եւ զբազուկն բարձր.
որպէս եհան զքեզ Տէր Աստուած քո
անտի, նոյնպէս արասցէ Տէր Աստուած
[8]մեր ընդ ամենայն ազգսն յորոց դու
20 երկնչիցիս յերեսաց նոցա։ Եւ զձիա-
տայն առաքեսցէ Տէր Աստուած քո ի
նոսա, մինչեւ սատակեսցին մնացորդքն
21 եւ թագուցեալքն ի քէն։ Մի՛ զանգի-
տիցես յերեսաց նոցա. զի Տէր Աստուած
22 քո ի միջի քում է, [9]մեծ եւ հզօր"։ Եւ
ծախեսցէ Տէր Աստուած քո զազգսն
զայնոսիկ յերեսաց քոց առ սակաւ սա-
կաւ. ոչ կարասցես սատակել զնոսա
վաղվաղակի. զի մի՛ [1]լինիցի երկիրն ա-
ւերակ, եւ" բազմանայցեն ի վերայ քո
23 գազանք անապատի։ Եւ մատնեսցէ զնո-
սա Տէր Աստուած քո ի ձեռս քո, եւ
կորուսցէ զնոսա կորստեամբ մեծաւ,
24 մինչեւ սատակեսցէ զնոսա։ Եւ մատ-
նեսցէ զթագաւորս նոցա ի ձեռս [8]ձեր,
եւ կորուսջիք զանուն նոցա [10]ի տեղւո-
ջէն յայնմանէ". եւ մի՛ ոք կացցէ ընդդէմ
25 քո մինչեւ սատակեսցես զնոսա։ Զդրօշ-
եալս դից նոցա այրեսցես հրով, եւ մի՛
ցանկանայցես արծաթոյ եւ ոսկւոյ [11]ի
նոցանէ, եւ մի՛ առնուցուս քեզ, եւ մի՛
[12]յանցանիցես նովաւ. զի գարշելի է այն
26 Տեառն Աստուծոյ քում։ Եւ մի՛ տանի-
ցիս զգարշելին ի տուն քո, եւ լինիցիս
ի նզովս իբրեւ զնոյն. այլ գարշելով
գարշեսցիս, եւ պղծելով պղծեսցես զնո-
սա, զի նզովեալ է։

ԳԼ. Ը

1 Ամենայն պատուիրանաց զոր ես պա-
տուիրեմ ձեզ այսօր, զգոյշ լինիջիք առ-
նելոյ, զի կեցջիք եւ բազմապատիկք լի-
նիցիք, եւ մտանիցէք ժառանգիցէք զեր-
կիրն զոր երդուաւ Տէր հարցն [13]մերոց։
2 Եւ յիշեսցես զամենայն ճանապարհն զոր
ած զքեզ Տէր[14] ընդ անապատն, զի ըկիցէ

[8] Եբր. քո [9] Եբր. Աստուած մեծ եւ ահաւոր
[10] Եբր. ի ներքոյ երկնից [11] Եբր. որ ի նոսա [12] Եբր. անկցիս ի թակարդ [13] Եբր. ձերոց [14] Եբրայեցին յաւելու, Աստուած քո զայս քառասուն ամ

զքեզ եւ փորձիցէ զքեզ, եւ ճանաչիցէ
թէ զի՛նչ կայցէ ի սրտի քում, եթէ պա-
հեսցես զպատուիրանս նորա եւ թէ ոչ։
3 Եւ չարչարեաց զքեզ, եւ սովալլուկ ա-
րար զքեզ, եւ կերակրեաց զքեզ մանա-
նայիւն զոր ոչ գիտէիր եւ ոչ գիտէին
հարքն քո, զի յայտ արասցէ քեզ
թէ ոչ հացիւ միայն կեցցէ մարդ, այլ
ամենայն բանիւ որ ելանէ ի բերանոյ
4 [1]Աստուծոյ՝ կեցցէ մարդ։ Հանդերձք քո
ոչ մաշեցան ի քէն, եւ ոտք քո ոչ փա-
պարեցին զայն ամս քառասուն։
5 Եւ ծանիցես ի սրտի քում, թէ որպէս
այր ոք որ խրատէ զորդի իւր, այնպէս
6 Տէր Աստուած քո [2]խրատեսցէ զքեզ։ Եւ
պահեսցես զպատուիրանս Տեառն Աս-
տուծոյ քո գնալ ի ճանապարհս նորա եւ
7 երկնչել ի նմանէ։ Զի Տէր Աստուած քո
տարցի զքեզ յերկիրն բարի [3]եւ յաղթ",
ուր վտակքն ջրոց եւ աղբերք անդնդոց
8 բղխեն ընդ դաշտս եւ ընդ լերինս. Եր-
կիր ցորենոյ եւ գարւոյ եւ գինւոյ, [4]այ-
գեաց եւ նռնենեաց. երկիր ձիթենեաց,
9 իւղոյ եւ մեղու. Երկիր՝ յորում ոչ աղ-
քատութեամբ կերիցես զհաց քո, եւ ոչ
կարօտանայցես ինչ ի նմա. երկիր՝ ո-
րոյ քարինք իւր երկաթ, եւ ի լերանց
նորա հատանիցես պղինձ։
10 Եւ կերիցես եւ յագեսցիս, եւ օրհնես-
ցես զՏէր Աստուած քո ի վերայ երկրին
11 բարութեան զոր ետ քեզ։ Հայեաց յանձն
քո, զուցէ մոռանայցես զՏէր Աստուած
քո՝ չպահել զպատուիրանս նորա եւ զդա-
տաստանս եւ զիրաւունս նորա զոր ես
12 քեզ պատուիրեմ[5]։ Գուցէ յորժամ ու-
տիցես եւ յագիցիս, եւ տունս գեղեցիկս
13 շինեսցես եւ բնակեսցես ի նոսա, Եւ
բազմանայցէ արջառ եւ ոչխար քո, եւ
յաճախիցէ քեզ արծաթ եւ ոսկի, եւ ա-
մենայն ինչ որ քո իցէ՝ բազմանայցէ,
14 Հպարտանայցես ի սրտի քում, եւ մո-
ռանայցես զՏէր Աստուած քո որ եհան
զքեզ յերկրէն Եգիպտացւոց ի տանէ ծա-
15 ռայութեան, Եւ ած զքեզ ընդ անապատն
մեծ եւ ընդ ահագին, ուր օձն խածանէր
եւ կարիճ եւ ծարաւ, [6]եւ ոչ գոյր ջուր,
եւ եհան քեզ յապառաժ վիմէ աղբեւր
16 ջուրց. Որ կերակրեաց զքեզ մանանա-
յիւն յանապատին, զոր ոչ գիտէին հարքն
քո, զի չարչարեսցէ զքեզ եւ փորձեսցէ
զքեզ, եւ բարի արասցէ քեզ ի վախճանի
17 քում. Մի՛ ասիցես ի սրտի քում, թէ
Զօրութիւն իմ եւ ուժգնութիւն ձեռին
իմոյ արար ինձ զզօրութիւնս զայս [3]մեծ.
18 Այլ յիշեսցես զՏէր Աստուած քո, զի
նա տայ քեզ ոյժ առնել զօրութիւն, զի
հաստատեսցէ զուխտն իւր զոր երդուաւ
հարցն քոց, որպէս եւ այսօր։
19 Եւ եղիցի եթէ մոռանալով մոռասցիս
զՏէր Աստուած քո, եւ երթայցես զհետ
աստուածոց օտարաց եւ պաշտիցես զնո-
սա եւ երկիր պագանիցես նոցա, [7]ունիմ
ձեզ վկայ այսօր զերկինս եւ զերկիր",
20 զի կորստեամբ կորնչիցիք. Որպէս եւ
ազգքն զորս Տէր կորուսցէ յերեսաց ձե-
րոց, այնպէս կորնչիջիք, փոխանակ զի ոչ
լուարուք ձայնի Տեառն Աստուծոյ ձերոյ։

ԳԼ. Թ

1 Լուր, Իսրայէլ. դու անցանես այսօր ընդ
Յորդանան մտանել ժառանգել զազգս
մեծամեծս եւ զօրաւորս քան [8]զձեզ,
եւ քաղաքս մեծամեծս եւ պարսպեալս
2 մինչեւ յերկինս, Զժողովուրդն մեծ եւ
զբազում եւ զյաղթանդամ, զորդիսն
Ենակայ զորս դու իսկ գիտես, եւ լուար
եթէ Ո՞վ կացցէ ընդդէմ որդւոցն Ենակայ։
3 Եւ ծանիցես այսօր զի Տէր Աստուած
քո նա ինքն երթայցէ առաջի քո, որ
հուրն ծախիչ է, նա սատակեսցէ զնո-
սա, եւ նա կործանեսցէ զնոսա առաջի
երեսաց քոց, եւ [9]սատակեսցէ զնոսա եւ
կորուսցէ" զնոսա վաղվաղակի, որպէս
4 եւ ասաց քեզ Տէր։ Մի՛ ասիցես ի սրտի
քում ի ծախել զնոսա Տեառն Աստուծոյ
քո յառաջոյ քումմէ, թէ Վասն արդա-
րութեան իմոյ ած զիս Տէր ժառանգել
զերկիրս զայս [10]բարի. զի ոչ վասն ար-
դարութեան քո, այլ" վասն ամպարշտու-
թեան ազգացն այնոցիկ սատակեսցէ զնո-
սա Տէր [3]Աստուած քո" յառաջոյ քում-
5 մէ։ Քանզի ոչ վասն արդարութեան քո
եւ ոչ վասն անբծութեան սրտի քո մտա-
նես ժառանգել զերկիր նոցա, այլ վասն
անօրէնութեան ազգացն այնոցիկ Տէր
Աստուած քո սատակեսցէ զնոսա յերե-
սաց քոց, եւ զի հաստատեսցէ [11]զուխտն
զոր երդուաւ Տէր հարցն [12]մերոց Աբրա-

[1] Եբր. Տեառն [2] Եբր. խրատէ [3] Յն։Եբր. պակասէ
[4] Եբր. թզենեաց [5] Եբրայեցին յաւելու, այսօր
[6] Եբր. ուր
[7] Եբր. վկայեմ ձեզ այսօր [8] Եբր. զքեզ [9] Եբր.
վանեսցես զնոսա եւ կորուսցես [10] Եբր. զի
[11] Եբր. զբանն [12] Եբր. քոց

6 համբու եւ Իսահակայ եւ Յակոբայ։ Եւ
ծանիցես այսօր զի ոչ վասն արդարու-
թեան քո Տէր Աստուած քո տայ քեզ
զերկիրն բարի ժառանգել. զի ժողովուրդ
խստապարանոց ես։
7 Յիշեա, մի մոռանայցես որչափ բար-
կացուցեր զՏէր Աստուած քո յանապա-
տին. յօրէ յորմէ ելէք յերկրէն Եգիպ-
տացւոց, մինչեւ եկիք ի տեղիս յայս,
խեռութեամբ վարէիք ի տեառնակոխ-
8 կոյս։ Եւ ի Քորեբ բարկացուցէք զՏէր,
9 եւ բարկացաւ Տէր սատակել զձեզ։ Ել-
անելն իմում ի լեառնն առնուլ զտախ-
տակսն քարեղէնս, զտախտակսն ուխտի
զոր ուխտեաց Տէր ընդ ձեզ, եւ եղէ ի
լերինն զքառասուն տիւ եւ զքառասուն
գիշեր. հաց ոչ կերայ եւ ջուր ոչ արբի.
10 Եւ ետ ինձ Տէր զերկոսին տախտակսն
քարեղէնս, գրեալս մատամբն Աստու-
ծոյ. եւ ի նոսա գրեալ էին ամենայն
պատգամքն զոր խօսեցաւ Տէր ընդ ձեզ
11 ի լերինն[1] յաւուրն եկեղեցւոյ։ Եւ եղեւ
յետ քառասուն տուընջեան եւ քառա-
սուն գիշերոյ ետ ինձ Տէր զերկուս տախ-
տակսն քարեղէնս, տախտակս ուխտի։
12 Եւ ասէ ցիս Տէր, Արի էջ վաղվաղակի
աստի, զի անօրինեցաւ ժողովուրդն քո
զոր հաներ յերկրէն Եգիպտացւոց. ան-
ցին արդէն զճանապարհաւն զոր [2]պա-
տուիրեցեր նոցա, եւ արարին իւրեանց
13 ձուլածոյս։ Եւ [3]ասէ ցիս Տէր, Խօսե-
ցայ ընդ քեզ մի անգամ եւ երկիցս եւ
ասեմ", Տեսի զժողովուրդդ զայդ, եւ
14 ահա ժողովուրդ խստապարանոց է. Թոյլ
տուր ինձ սատակել զդոսա, եւ ջնջեցից
զանուն դոցա ի ներքոյ երկնից, եւ ա-
րարից զքեզ յազգ [4]մեծ եւ ի" հզօր եւ
ի բազում առաւել քան զայդ։
15 Եւ դարձեալ իջի ի լեռնէ անտի, եւ
լեառնն բորբոքէր հրով, եւ երկու տախ-
16 տակքն յերկոսին ի ձեռս իմում։ Եւ տե-
սեալ եթէ մեղայք առաջի Տեառն Աս-
տուծոյ [5]մերոյ, եւ արարէք ձեզ [6]ձու-
լածոյս, եւ անցէք զճանապարհաւն զոր
17 պատուիրեաց Տէր, Առեալ զերկոսին
տախտակսն [7]ի ձեռաց իմոց" խորտակե-
18 ցի յանդիման ձեր։ Եւ աղաչեցի առաջի
Տեառն կրկին անգամ իբրեւ զառաջինն
զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր.
հաց ոչ կերայ եւ ջուր ոչ արբի, վասն
ամենայն մեղաց ձերոց զոր մեղայք՝ առ-
նել զչար առաջի Տեառն [4]Աստուծոյ մե-
19 րոյ", բարկացուցանել զնա. [8]Եւ զահի
հարեալ եմ վասն բարկութեանն եւ
սրտմտութեանն, զի բարկացաւ Տէր ի
վերայ ձեր սատակել զձեզ. եւ լուաւ
20 ինձ Տէր ի ժամանակին յայնմիկ։ Եւ Ա-
հարոնի բարկացաւ Տէր յոյժ սատակել
զնա. եւ արարի աղօթս եւ վասն Ահա-
21 րոնի ի ժամանակին յայնմիկ։ Եւ զմեղսն
ձեր զոր արարէք, զորթն, առի եւ այ-
րեցի զնա հրով, եւ կոտորեցի եւ խոր-
տակեցի զնա յոյժ, մինչեւ եղեւ մանր
իբրեւ զփոշի, եւ ընկեցի զփոշին ի վտակն
որ իջանէր ի լեռնէ անտի։
22 Եւ ի Հրայրեացն եւ ի Փորձութեանն
եւ ի Գերեզմանս ցանկութեանն բարկա-
23 ցուցէք զՏէր [4]Աստուած ձեր"։ Եւ յոր-
ժամ առաքեաց զձեզ Տէր ի Կադեսբառ-
նեայ, ասէ, Ելէք ժառանգեցէք զերկիրն
զոր տայց եմ ձեզ, հեստեցէք բանին
Տեառն Աստուծոյ ձերոյ, եւ ոչ հաւա-
տացէք նմա, եւ ոչ լուարուք ձայնի
24 Տեառն. Չի հեստեալ կայիք ի տեառնա-
կոխմանն յօրէ յորմէ [9]ծանուցաւ ձեզ"։
25 Եւ աղաչեցի առաջի Տեառն զքառա-
սուն տիւ եւ զքառասուն գիշեր, զորս
աղաչեցին, քանզի ասաց Տէր սատակել
26 զձեզ։ Եւ կացի յաղօթս առ Տէր եւ ա-
սեմ, Տէր, Տէր, [4]Թագաւոր աստուա-
ծոց," մի սատակեր զժողովուրդ քո եւ
զբաժին քո զոր փրկեցեր զօրութեամբ
քո մեծաւ, զորս հաներ յԵգիպտոսէ
[10]զօրութեամբ քո մեծաւ, եւ կարող ձե-
27 ռամբ եւ բարձր բազկաւ"։ Յիշեա դու
զԱբրահամ եւ զԻսահակ եւ զՅակոբ,
զծառայս քո, [4]որոց երդուար քեւ." մի
հայիր ի խստութիւն ժողովրդեանդ այ-
դորիկ եւ յամպարշտութիւնս եւ ի մեղս
28 դոցա։ Գուցէ խօսիցին բնակիչք երկրին
ուստի հաներ զմեզ, եւ ասիցեն, Առ ի
չկարելոյ Տեառն տանել զնոսա յերկիրն
զոր խոստացաւ նոցա, եւ առ ատել
զնոսա [4]Տեառն՝ եհան զնոսա կոտորել
29 զնոսա յանապատին։ Եւ սոքա ժողո-
վուրդ քո եւ ժառանգութիւն քո զոր
հաներ յերկրէն Եգիպտացւոց զօրու-
թեամբ քո մեծաւ եւ բարձր բազկաւ։

---

[1] Եբրայեցին յաւուրն, ի միջոյ հրոյն [2] Եբր. պատուիրեցի [3] Եբր. խօսեցաւ Տէր ընդ իս եւ ասէ [4] Յ Եբր. զօրաւոր [5] Եբր. ձերոյ [6] Եբր. որթ ձուլածոյ [7] Եբր. ընկեցի յերկոցունց ձեռաց իմոց, եւ

[8] Եբր. Չի [9] Եբր. ծանեայ զձեզ [10] Եբր. կարող ձեռամբ

## ԳԼ. Ժ

1 Ի ժամանակին յայնմիկ ասաց ցիս Տէր,
Կոփեա դու քեզ երկուս տախտակս քա-
րեղէնս իբրեւ զառաջինսն, եւ [1]ել
ի լեառնն. եւ արասցես դու քեզ տապա-
2 նակ փայտեղէն. Եւ գրեցից ի տախտակսն
զնոյն պատգամսն որ էին յառաջին տախ-
տակսն զորս դուն խորտակեցեր, եւ դի-
3 ցես զնոսա ի ներքս ի տապանակին: Եւ
արարի տապանակ յանփուտ փայտից,
եւ կոփեցի երկուս տախտակս քարեղէնս
իբրեւ զառաջինսն, եւ ելի ի լեառնն,
եւ երկու տախտակքն [2]յերկոսին ի ձեռս
4 իմում: Եւ գրեաց յերկոսին տախտակսն
ըստ առաջին գրոյն զտասն պատգամսն
զոր խօսեցաւ ընդ ձեզ Տէր ի լերինն ի
ի միջոյ [3]հրոյն, եւ ետ զնոսա ցիս Տէր:
5 Եւ դարձայ իջի ի լեռնէ անտի, եւ եդի
զտախտակսն ի ներքս [4]ի տապանակին,
եւ էին" անդ որպէս եւ պատուիրեաց
ինձ Տէր:
6 Եւ որդիքն Իսրայելի չուեցին ի Բե-
րովթայ որդւոցն Յակիմայ ի [5]Մադայի.
եւ անդ մեռաւ Ահարոն եւ անդէն թա-
ղեցաւ, եւ քահանայացաւ Եղիազար
7 որդի նորա ընդ նորա: Անտի չուեցին
ի Գադգադ, եւ ի Գադգադայ յԵտաբա,
յերկիր փտակաց ջուրց:
8 Յայնմ ժամանակի զատոյց Տէր զցեղն
Ղեւեայ բառնալ զտապանակ ուխտին
Տեառն, կալ առաջի Տեառն պաշտել
եւ [6]աղօթս մատուցանել" յանուն նորա
9 մինչեւ ցայսօր: Վասն այնորիկ ոչ գոյ
Ղեւտացւոյն բաժին եւ ժառանգութիւն
ի մէջ եղբարց իւրեանց, զի Տէր ինք-
նին է մասն եւ ժառանգութիւն նոցա,
որպէս եւ ասաց [7]նոցա:
10 Եւ ես կացի ի լերինն[8] զքառասուն տիւ
եւ զքառասուն գիշեր, եւ լուաւ ինձ
Տէր ի ժամանակին յայնմիկ, եւ ոչ կա-
11 մեցաւ սատակել զձեզ: Եւ ասէ ցիս Տէր,
Գնա չուեա առաջի ժողովրդեանդ այդո-
րիկ, եւ մտցեն եւ ժառանգեսցեն զեր-
կիրն զոր երդուայ հարցն դոցա տալ դոցա:
12 Եւ արդ, Իսրայէլ, զի՞նչ խնդրէ ի
քէն Տէր Աստուած քո. այլ երկնչել ի
Տեառնէ Աստուծոյ քումմէ, եւ գնալ
յամենայն ի ճանապարհս նորա եւ սիրել
զնա եւ պաշտել զՏէր Աստուած քո
յամենայն սրտէ քումմէ եւ յամենայն
13 անձնէ քումմէ, Եւ պահել զպատուի-
րանս Տեառն [2]Աստուծոյ քո" եւ զիրա-
ւունս նորա զոր ես պատուիրեմ քեզ
14 այսօր, զի բարի լիցի քեզ: Ահաւասիկ
Տեառն Աստուծոյ քո երկինք եւ երկ-
նից երկինք, եւ երկիր եւ ամենայն որ
15 է ի նոսա: Բայց ընդ հարսն ձեր [2]յա-
ռաջագոյն հաճեցաւ Տէր սիրել զնոսա,
եւ ընտրեաց զզաւակ նոցա յետ նոցա,
զձեզ քան զազգս ամենայն ըստ աւուրս
16 ըստ այսմիկ: Եւ թլփատեցէք [9]զխստա-
սրտութիւն ձեր", եւ զպարանոցս ձեր
17 մի՛ եւս խստացուցանէք. Զի Տէր Ա-
ստուած [10]մեր, նա է Աստուած աստու-
ծոց եւ Տէր տերանց, Աստուած մեծ
եւ հզօր եւ ահաւոր, որ ոչ աչառէ ե-
18 րեսաց, եւ ոչ առնու կաշառ. Առնէ
իրաւունս [2]եկին եւ" որբոյ եւ այրւոյ.
սիրէ զնժդեհն տալ նմա հաց եւ հան-
19 դերձ: Եւ սիրեցէք զպանդուխտն. զի
եւ դուք պանդուխտք էիք յերկրին Ե-
20 գիպտացւոց: Ի Տեառնէ Աստուծոյ քում-
մէ երկիցես, եւ զնա պաշտեսցես, եւ
ի նա յարեսցիս, եւ յանուն նորա երդ-
21 նուցուս: Զի նա է պարծանք քո եւ
նոյն Աստուած քո, որ արար ի քեզ
զմեծամեծսն եւ զփառաւորս զոր տե-
22 սին աչք քո: Եւթանասուն ոգւովք ի-
ջին հարքն քո յԵգիպտոս, եւ արդ ահա
արար զքեզ Տէր Աստուած քո իբրեւ
զաստեղս երկնից բազմութեամբ:

## ԳԼ. ԺԱ

1 Եւ սիրեսցես զՏէր Աստուած քո, եւ
պահեսցես զպահպանութիւնս նորա եւ
զիրաւունս նորա եւ զպատուիրանս նո-
րա եւ զպատգամս նորա զամենայն
2 աւուրս [2]կենաց քոց": Եւ ծանիջիք այ-
սօր, եթէ ոչ վասն որդւոց քոց որք ոչ
գիտեն եւ ոչ տեսին զխրատ Տեառն Ա-
ստուծոյ քո եւ զմեծամեծս նորա, զձեռն
3 հզօր եւ զբազուկ բարձր, Զնշանս նորա
եւ [11]զարուեստս զոր արար ի մէջ Եգիպ-
տոսի, ի Փարաւոն արքայ Եգիպտացւոց
4 եւ յամենայն երկիր նորա. Եւ զոր ինչ

[1] Ոմն. ել առ իս [2] Յոմն. դ–ն–ե [3] Ոմն. հրոյն յաւուրն եկեղեցւոյ [4] Ոմն. ի տապանակին զոր արարի. եւ եղեն [5] Ոմն. Մոսերա [6] Ոմն. օրհնել [7] Ոմն. Տէր Աստուած քո նմա [8] Ոմն. [illegible], ըստ աւուրցն առաջնոց.

[9] Ոմն. զանթլփատութիւն սրտից ձերոց [10] Ոմն. ձեր [11] Ոմն. զգործս նորա

արար ընդ զօրսն Եգիպտացւոց , [1]զկառս
նոցա եւ զերիվարս իւրեանց”. որպէս
ծփեաց զՋուրս Կարմիր ծովուն ի վերայ
երեսաց նոցա ի յարձակել նոցա զկնի
[2]մեր , կորոյս զնոսա Տէր մինչեւ ցայսօր
5 ժամանակի . Եւ զոր ինչ արար ձեզ յա-
նապատի անդ , մինչեւ եկիք ի տեղիս
6 յայս . Եւ զոր ինչ արար ընդ Դաթան
եւ ընդ Աբիրոն , ընդ որդիս Եղիաբու
որդւոյ Ռուբենի , որոց բացեալ երկրի
զբերան իւր եկուլ զնոսա եւ զտունս
նոցա եւ զվրանս նոցա , եւ զամենայն
ինչս նոցա ընդ նոսա ի միջոյ ամենայն
7 Իսրայելի : Զի ձեր իսկ աչք տեսին զա-
մենայն զգործս Տեառն զմեծամեծս զոր
8 արար [3]ի ձեզ մինչեւ ցայսօր” : Եւ պա-
հեցէք զամենայն պատուիրանս [3]նորա
զոր ես պատուիրեմ ձեզ այսօր, զի [4]կեց-
ջիք եւ բազմապատիկք լինիցիք”, եւ
մտանիցէք ժառանգիցէք զերկիրն , յոր
դուք անցանէք [5]ընդ Յորդանան” ժա-
9 ռանգել զնա . Զի երկայնօրեայք լինի-
ցիք ի վերայ երկրին զոր երդուաւ Տէր
հարցն ձերոց տալ նոցա եւ զաւակի
նոցա [3]յետ նոցա”, երկիր՝ որ բղխէ
զկաթն եւ զմեղր :
10 Քանզի երկիրն յոր մտանելոց էք ժա-
ռանգել զնա՝ ոչ իբրեւ զերկիրն Եգիպ-
տացւոց է ուստի ելէք դուք անտի ,
[6]յորժամ սերմանեն սերմանս , եւ ոռո-
գանեն ոտիւք” իբրեւ զպարտէզ բանջա-
11 րոյ . Այլ երկիրն յոր դուք մտանելոց էք
ժառանգել՝ երկիր լեռնային եւ դաշտա-
կան է . յանձրեւոյ երկնից ըմպէ ջուր .
12 Երկիր՝ զոր Տէր Աստուած քո դարմանէ
զնա , հանապազ աչք Տեառն Աստուծոյ
քո ի վերայ նորա , ի սկզբանէ տարւոյն
13 մինչեւ ցկատարումն տարւոյն : Եւ եթէ
լսելով լուիցես [7]ամենայն պատուիրա-
նաց նորա” զոր ես պատուիրեմ քեզ այ-
սօր , սիրել զՏէր Աստուած քո եւ պաշ-
տել զնա յամենայն սրտէ քումմէ , եւ
14 յամենայն անձնէ քումմէ , [8]Տացէ անձ-
րեւ երկրին ձերում ի ժամանակի իւրում
զկանուխ եւ զանագան , եւ ժողովեսցես
զցորեան քո եւ զգինի քո եւ զեւղ քո :
15 Եւ [8]տացէ խոտ յանդս քո անասնոց քում ,
16 եւ կերիցես եւ յագեսցիս : Զգուշացարուք
յանձինս ձեր , գուցէ յուլանայցեն սիրտք
ձեր եւ յանցանիցէք եւ պաշտիցէք զաս-
տուածս օտարս , եւ երկիր պագանիցէք
17 նոցա . Եւ սրտմտեալ բարկանայցէ Տէր
ի վերայ ձեր , եւ արգելուցու զերկինս եւ
ոչ լինիցի անձրեւ , եւ երկիր ոչ տացէ
զպտուղ իւր , եւ կորնչիցիք արագ արագ
յերկրէն բարութեան զոր ետ ձեզ Տէր :
18 Եւ դիջիք զբանս զայս ի սիրտս ձեր եւ
յանձինս ձեր , եւ արկջիք զսոսա նշան
ի ձեռս ձեր , եւ եղիցին [9]անշարժ առաջի
19 աչաց ձերոց . Եւ [10]ուսուսջիք որդւոց
ձերոց խօսել զսոսա ի նստել ի տան , եւ
ի գնալ ի ճանապարհի , եւ ի ննջել եւ ի
20 յառնել . Եւ գրեսջիք զսոսա ի վերայ սե-
21 մոց տանց ձերոց եւ ի դրունս ձեր . Զի
[11]բազմօրեայք լինիցիք”, եւ աւուրք որդ-
ւոց ձերոց ի վերայ երկրին զոր երդուաւ
Տէր հարցն [12]քոց տալ քեզ” ըստ աւուրց
երկնից ի վերայ երկրի :
22 Եւ եղիցի եթէ [13]լսելով լուիջէք ամե-
նայն պատուիրանացս այսոցիկ” զոր ես
պատուիրեմ ձեզ այսօր առնել , սիրել
զՏէր Աստուած քո , գնալ ի ճանապարհս
23 նորա եւ յարել ի նա , Մերժեսցէ Տէր
զամենայն ազգսն զայնոսիկ յերեսաց ձե-
րոց , եւ ժառանգեսջիք զազգս մեծամեծս
24 եւ հզօրագոյնս քան զձեզ : Ամենայն տե-
ղի ուր կոխիցեն գնացք ոտից ձերոց՝
ձեզ լիցի . յանապատէ անտի [14]մինչեւ
ցԱնեսրն Լիբանանու , եւ ի գետոյն մեծէ ,
գետոյն” Եփրատայ մինչեւ ցծովն արեւ-
25 մտից եղիցին սահմանք ձեր : Եւ ոչ ոք
դառնայցէ ընդդէմ ձեր , եւ զահ եւ զեր-
կեւղ ձեր արկցէ Տէր Աստուած ձեր ի
վերայ երեսաց ամենայն երկրին զոր կո-
խիցէք , որպէս խօսեցաւ ընդ ձեզ Տէր .
26 Եւ ես ահաւասիկ տամ այսօր առաջի
27 ձեր օրհնութիւնս եւ անէծս . Օրհնու-
թիւն՝ եթէ լսիցէք պատուիրանաց Տեառն
Աստուծոյ ձերոյ զոր ես պատուիրեմ ձեզ
28 այսօր . Եւ անէծս՝ եթէ ոչ լուիցէք պա-
տուիրանաց Տեառն Աստուծոյ ձերոյ
[3]զոր ես պատուիրեմ ձեզ այսօր”, եւ մո-
լորիցիք ի ճանապարհէն զոր ես պա-
տուիրեցի ձեզ , երթալ պաշտել զաս-

---

[1]Եբր. ընդ երիվարս նոցա, եւ ընդ կառս նոցա
[2]Եբր. ձեր [3]3Եբր. — — — [4]Եբր. զօրանայցէք
[5]Եբր. անդր [6]Եբր. ուր սերմանէիր զսերմն քո, և ոռոգանէիր ոտիւք քովք [7]Եբր. պատուիրանաց իմոց [8]Եբր. Տաց

[9]Եբր. գրապանակ [10]Եբր. ուսուսջիք զնոսա
[11]Եբր. բազմասցին աւուրք ձեր [12]Եբր. ձերոց տալ նոցա [13]Եբր. պահելով պահիցէք զամենայն պատուիրանս զայսոսիկ [14]Եբր. և ի Լիբանանէ եւ ի գետոյն, ի գետոյն

29 տուածս օտարս զորս ոչ ճանաչիցէք ։ Եւ
եղիցի յորժամ տարցի զքեզ Տէր Աս-
տուած քո յերկիրն յոր անցանես [1]ընդ
Յորդանան" ժառանգել զնա , եւ տացես
դու զօրհնութիւնն ի լերինն Գարիզին ,
30 եւ զանէծս ի լերինն Գեբաղ . Ո՞չ ապա-
քէն յայնկոյս Յորդանանու է այն , յե-
տոյ ճանապարհին արեւմտից յերկրին
Քանանացւոց , [2]որոյ նիստն ընդ արեւ-
մուտս է մերձ ի Գաղգաղ՝ առ կաղնեաւն
31 բարձու" ։ Եւ դուք անցանէք ընդ Յոր-
դանան մտանել ժառանգել զերկիրն զոր
Տէր Աստուած տալոց է ձեզ ի ժառան-
գութիւն [1]զամենայն աւուրս", եւ ժա-
ռանգեսջիք զնա եւ բնակեսջիք ի նմա ։
32 Եւ զգուշասջիք առնել զամենայն հրա-
մանս նորա , եւ զդատաստանս զայս-
ոսիկ զոր ես տամ առաջի ձեր այսօր ։

Գլ. ԺԲ

1 Եւ այս են հրամանք եւ դատաստանք
զոր զգուշանայցէք առնել յերկրին զոր
Տէր Աստուած հարցն ձերոց տալոց է ձեզ
ի ժառանգութիւն , զամենայն աւուրս
2 զորս կեցցէք դուք ի վերայ երկրի ։ Կո-
րուսանելով կորուսջիք զամենայն տե-
ղիսն յորս պաշտեցին ի նոսա ազգքն ,
զորս դուք ժառանգիցէք զնոսա, զդիս իւր-
եանց ի վերայ լերանց բարձանց եւ ի
վերայ բլրոց , եւ ի ներքոյ ամենայն
3 վարսաւոր ծառոց . Եւ կործանեսջիք
զբագինս նոցա , եւ փշրեսջիք զարձանս
նոցա , եւ այրեսջիք հրով , [3]զանտառս
նոցա , եւ զդրօշեալս դից նոցա կոտո-
րեսջիք , եւ կորուսջիք զանուանս նո-
ցա ի տեղւոջէն յայնմանէ ։
4 Եւ մի՛ առնիցէք նոյնպէս Տեառն Աս-
5 տուծոյ ձերում . Այլ ի տեղւոջն զոր
ընտրեսցէ Տէր Աստուած ձեր ի միում
ի ցեղից ձերոց , [4]անուանել զանուն իւր
եւ կոչել ի նմա", խնդրեսջիք եւ մտջիք
6 անդր . Եւ մատուսջիք զողջակէզս ձեր
եւ զզոհս ձեր եւ զպատարագս ձեր եւ
[5]զպտուղս ձեր" եւ զուխտս ձեր եւ զկա-
մայականս ձեր [1]եւ զխոստովանութիւնս
ձեր", եւ զանդրանիկս արջառոյ եւ ոչ-
7 խարի ձերոց . Եւ կերիջիք առաջի Տեառն
Աստուծոյ ձերոյ , եւ ուրախ լինիջիք ի
վերայ ամենայնի յոր մխիցէք զձեռս
ձեր , դուք եւ տունք ձեր , որպէս եւ
օրհնեաց զքեզ Տէր Աստուած քո ։
8 Մի՛ առնիցէք զամենայն ինչ զոր այսօր
մեք աստ [1]ոչ առնեմք , իւրաքանչիւր
9 զհաճոյն առաջի իւր ։ Քանզի ոչ հասէք
ի հանգիստն եւ ի ժառանգութիւնն զոր
Տէր Աստուած [6]մեր տալոց է ձեզ , մին-
10 չեւ ցայսօր" ։ Եւ անցջիք ընդ Յորդանան
եւ բնակեսջիք յերկրին զոր Տէր Աս-
տուած [7]մեր ժառանգեցուսցէ ձեզ . եւ
հանգուսցէ զձեզ յամենայն թշնամեաց
ձերոց որ շուրջ զձեւք իցեն , եւ բնա-
11 կեսջիք [8]զգուշութեամբ . Եւ եղիցի տե-
ղին զոր ընտրեսցէ Տէր Աստուած [9]մեր
կոչել զանուն իւր ի վերայ նորա , անդ
մատուսջիք" զամենայն զոր ես պատուի-
րեմ ձեզ [1]այսօր , զողջակէզս ձեր եւ
զզոհս ձեր եւ զպատարագս ձեր եւ
[10]զպտուղս ձեռաց ձերոց [1]եւ զզահա-
մունս ձեր", եւ զամենայն ընտիրս [11]պա-
տարագաց ձերոց զոր ուխտիցէք [12]Աս-
12 տուծոյ ձերում" . Եւ ուրախ լինիջիք
առաջի Տեառն Աստուծոյ [13]մերոյ , դուք
եւ ուստերք ձեր եւ դստերք ձեր եւ ծա-
ռայք ձեր եւ աղախնայք ձեր , եւ Ղեւ-
տացին որ ի դրունս ձեր, զի ոչ գոյ նորա
բաժին եւ ոչ ժառանգութիւն ընդ ձեզ ։
13 Զգոյշ լեր անձին քում , զուցէ մա-
տուցանիցես զողջակէզս քո յամենայն
14 տեղւոջ զոր տեսանիցես . Այլ ի տեղւոջն
զոր ընտրեսցէ Տէր [14]Աստուած քո իւր
ի միում ի քաղաքաց" քոց, անդ մատու-
ցանիցես զողջակէզս քո , եւ անդ արաս-
ցես զամենայն զոր ես պատուիրեմ քեզ
15 այսօր ։ Այլ եւ ըստ ամենայն ցանկու-
թեան քում զենցես եւ ուտիցես միս ըստ
օրհնութեան Տեառն Աստուծոյ քո , զոր
ետ քեզ յամենայն քաղաքս . անսուրբն
որ ի քեզ եւ սուրբն ի միասին կերիցեն
զայն՝ իբրեւ զայծեամն եւ զեղջերու ։
16 Բայց արիւն մի՛ ուտիցէք , այլ յերկիր
հեղուցուք զնա իբրեւ զջուր ։
17 Մի՛ ժտիցես ուտել ի քաղաքս քո զտա-
սանորդս ցորենոյ քո եւ զգինւոյ քո եւ
զիւղոյ քո , զանդրանիկս արջառոյ քո եւ

[1]Յեբր. գ-լ-ա-ե [2]Եբր. բնակելոց յԱրաբա (ի դաշտին), մերձ ի Գաղգաղ , առ կաղնեօքն Մորէի [3]Տե՛ս Ելից ԼԴ. 13 ։ [4]Եբր. դնել զանուն իւր անդ , բնակել նմա [5]Եբր. զվերացմունս ձեռաց ձերոց

[6]Եբր. քո տալոց է քեզ [7]Եբր. ձեր [8]Եբր. յապահովս [9]Եբր. ձեր ի նմա , բնակեցուցանել զանուն իւր անդ , անդր տարջիք [10]Եբր. զվերացմունս [11]Եբր. ուխտից [12]Եբր. Տեառն [13]Եբր. ձերոյ [14]Եբր. ի միում ի ցեղից

զոչխարի քո, եւ զամենայն ուխտս զոր
ուխտիցէք, եւ [1]զխոստովանութիւնս ձեր
18 եւ զպտուղս ձեռաց ձերոց". Այլ առա-
ջի Տեառն Աստուծոյ քո կերիցես զայն,
ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տէր [2]Աստ-
ուած՝ իւր", դու եւ ուստր քո եւ դուստր
քո, ծառայն քո եւ աղախին քո եւ [3]եկն
որ ի քաղաքս քո. եւ ուրախ լինիցիս
առաջի Տեառն Աստուծոյ քո ի վերայ
19 ամենայնի յոր մխիցես զձեռն քո։ Զգոյշ
լեր անձին քում, գուցէ թողուցուս
զՂեւտացին պամենայն ժամանակս քո
որչափ եւ կեցցես ի վերայ երկրին։
20 Եւ եթէ ընդարձակեսցէ Տէր Աստուած
քո զսահմանս քո որպէս եւ խոստացաւ
քեզ, եւ ասիցես թէ՝ Կերայց միս, եթէ
ցանկանայցէ անձն քո ուտել միս, ըստ
ամենայն ցանկութեան անձին քո կերի-
21 ցես միս։ Ապա թէ հեռագոյն իցէ ի քէն
տեղին զոր ընտրեսցէ Տէր Աստուած քո
[4]անուանել զանուն իւր ի վերայ նորա",
եւ զենուցուս յարջառոյ քումմէ եւ
յոչխարէ քումմէ յորոց տացէ քեզ [5]Աստ-
տուած, զոր օրինակ պատուիրեցի քեզ,
կերիցես ի քաղաքս քո ըստ ցանկութեան
22 անձին քո։ Որպէս ուտիցի այծեամն եւ
եղջերու, այնպէս կերիցես եւ զայն.
անսուրբն ի քեզ եւ սուրբն նոյնպէս կե-
23 րիցեն։ Զգոյշ լեր չուտելոյ զարիւն, զի
24 արիւն նորա է շունչ իւր. Մի՛ ուտիցես
շունչ ընդ մսոյ, յերկիր հեղուցուս զնա
25 իբրեւ զջուր։ Եւ մի՛ ուտիցես զնա, զի
բարի լինիցի քեզ եւ որդւոց քոց յետ քո,
եթէ արասցես զբարին եւ զհաճոյ առաջի
26 Տեառն [6]Աստուծոյ քո"։ Բայց զսրբու-
թիւնս քո որ լինիցին քեզ, եւ զուխտս
քո զոր ուխտիցես, առեալ եկեսցես ի
տեղին զոր ընտրեսցէ Տէր [6]Աստուած քո
իւր՝ կոչել զանուն իւր ի վերայ նորա"։
27 Եւ արասցես զողջակէզս քո, [7]զմիսն
հանցես ի վերայ սեղանոյ Տեառն Աստ-
ուծոյ քո, եւ զարիւն զոհիցն հեղուցուս
առ յատակաւ սեղանոյն Տեառն Աստ-
ուծոյ քո, եւ զմիսն կերիցես։
28 Զգոյշ լեր եւ լուր, եւ արասցես զա-
մենայն զբանս զոր ես պատուիրեմ քեզ,
զի բարի լինիցի քեզ եւ որդւոց [8]քոց
յաւիտեան, եւ արասցես զբարին եւ
զհաճոյն առաջի Տեառն Աստուծոյ քո։
29 Եւ եթէ սատակեսցէ Տէր Աստուած
քո զազգսն յերեսաց քոց, յորում դու
մտանիցես ժառանգել զերկիր նոցա, եւ
ժառանգեսցես զնոսա եւ բնակեսցես
30 յերկրի նոցա, Զգոյշ լեր անձին քում,
գուցէ խնդրիցես երթալ զհետ նոցա յետ
սատակելոյ զնոսա յերեսաց քոց. մի՛
քննիցես զգիս նոցա եւ ասիցես, Զիա՞րդ
առնիցեն ազգքս այսոքիկ գիցն իւրեանց՝
31 զի եւ ես արարից [9]Տեառն։ Մի՛ առնիցես
նոյնպէս Տեառն Աստուծոյ քում, զի զգար-
շելին զոր ատեայ Տէր՝ արարին դիցն իւր-
եանց. զի զուստերս իւրեանց եւ զդստերս
32 իւրեանց այրեն հրով դիցն իւրեանց։ Ամե-
նայն բանի զոր ես պատուիրեմ քեզ [6]այսօր՝
զգուշանայցես առնելոյ, մի՛ յաւելուցուս
ի նա եւ մի՛ հատանիցես ի նմանէ։

ԳԼ. ԺԳ

1 Եւ եթէ յառնիցէ ի միջի քում մարգարէ
կամ երազահան երազոյ, եւ տացէ քեզ
2 նշան կամ արուեստ, Եւ լինիցի նշանն
կամ արուեստն զոր խօսեցաւ առ քեզ,
եւ ասիցէ, Երթիցուք պաշտեսցուք
զաստուածս օտարս զորս ոչ ճանաչիցէք,
3 Մի՛ լսիցէք բանից մարգարէին այնորիկ,
կամ երազահանին երազոյ. զի փորձէ
զձեզ Տէր [10]Աստուած ճանաչել", թէ սի-
րիցէ՞ք զՏէր Աստուած [11]մեր յամենայն
սրտէ ձերմէ եւ յամենայն անձնէ ձերմէ։
4 Զկնի Տեառն Աստուծոյ ձերոյ երթիջիք,
եւ ի նմանէ երկնչիջիք եւ զպատուի-
րանս նորա պահեսջիք. եւ ձայնի նորա
5 լուիջիք[12] եւ ի նա յարեսջիք։ Եւ մար-
գարէն այն կամ երազահանն երազոյ
մեռցի, զի խօսեցաւ ապստամբեցուցանել
զքեզ ի Տեառնէ Աստուծոյ քումմէ որ
եհան զքեզ յերկրէն Եգիպտացւոց, որ
փրկեաց զքեզ յերկրէն ծառայութեան,
մերժել զքեզ ի ճանապարհէն զոր պա-
տուիրեաց քեզ Տէր Աստուած քո գնալ ընդ
նա. եւ բարձցես զչարն ի միջոյ ձերմէ։
6 Եւ եթէ աղաչեսցէ զքեզ եղբայր քո
[6]առ ի հօրէ կամ" առ ի մօրէ քումմէ,
կամ ուստր քո, կամ դուստր քո, կամ
կին ծոցոյ քո, կամ բարեկամ հանգոյն
անձին քո, գաղտ եւ ասիցէ, Երթիցուք

[1] Եբր. զկամայականս և զվերադմունս ձեռաց քոց [2] Եբր. Աստուած քո [3] Եբր. Ղեւտացին [4] Եբր. դնել զանուն իւր անդ [5] Եբր. Տէր [6] Յեբր. գ—խ—ւ—ե [7] Եբր. զմիսն և զարիւն [8] Եբր.՝ քոց յետ քո

[9] Եբր. այնպէս [10] Եբր. Աստուած ձեր ճանաչել զձեզ [11] Եբր. ձեր [12] Եբր.—ւեցէն յ—ե—ւ, և զնա պաշտեսջիք

պաշտեսցուք զաստուածս օտարս զորս
7 ոչ ճանաչիցես դու եւ հարքն քո, Յաստ-
ուածոց ազգացն որ շուրջ զձեւք իցեն,
ի մերձաւորացն քոց կամ ի հեռաւորաց,
ի ծագաց երկրին մինչեւ ի ծագս երկրին,
8 Մի՛ հաւանիցիս նմա եւ մի՛ լուիցես նմա,
եւ մի՛ խնայեսցէ ակն քո ի նա, եւ մի՛
զթասցիս ի նա եւ մի՛ ծածկեսցես զնա.
9 [1]Պատմելով պատմեսցես զնմանէ՟. ձեռք
քո նախ լինիցի ի նա սպանանել զնա,
եւ ապա ձեռն ամենայն ժողովրդեանն.
10 Եւ քարկոծեսցես զնա քարամբք եւ
մեռցի. զի խնդրեաց ապստամբեցուցա-
նել զքեզ ի Տեառնէ Աստուծոյ քումմէ,
որ եհան զքեզ յերկրէն Եգիպտացւոց
11 ի տանէ ծառայութեան։ Եւ լուեալ ամե-
նայն Իսրայելի զարհուրեսցի, եւ ոչ
եւս յաւելուցուն առնել ըստ բանին
այնորիկ չարի ի միջի ձերում։
12 Եւ եթէ լուիցես ի միում ի քաղաքացն
զորս Տէր Աստուած քո տացէ քեզ բնա-
13 կել անդ, ասել՝ եթէ Ելին արք անօ-
րէնք ի մէնջ եւ ապստամբեցուցին զա-
մենայն բնակիչս քաղաքին իւրեանց,
եւ ասեն, Երթիցուք եւ պաշտեսցուք
զաստուածս օտարս զորս ոչ գիտիցէք,
14 Եւ քննեսցես եւ հարցցես եւ յուզես-
ցես յոյժ, եւ ահա ստոյգ հաւաստեաւ
իցէ բանն, եւ եղեալ իցէ գարշութիւնն
15 ի ձեզ, Կոտորելով կոտորեսջիք զամե-
նայն բնակիչս [2]երկրին այնորիկ կոտոր-
մամբ սրոյ, եւ նզովելով նզովեսջիք
զնա եւ զամենայն ինչ որ ի նմա եւ
16 զանասուն նոցա ի բերան սրոյ. Եւ զա-
մենայն կապուտ նորա ժողովեսցես յերս
նորա, եւ այրեսցես հրով զքաղաքն եւ
զամենայն զաւար նորա համօրէն [3]ա-
ռաջի Տեառն Աստուծոյ քո, եւ եղիցի
աներակ յաւիտեան եւ ոչ եւս շինեսցի։
17 Եւ մի՛ կցեսցի ի ձեռին քում ի նզովից
նորա, զի դարձցի Տէր ի բարկութենէ
սրտմտութեան իւրոյ, եւ տացէ քեզ
ողորմութիւն, եւ ողորմեսցի քեզ եւ
բազմացուսցէ զքեզ, զոր օրինակ երդ-
18 ուաւ Տէր հարցն քոց, եթէ լուիցես
ձայնի Տեառն Աստուծոյ քո պահել զա-
մենայն պատուիրանս նորա զոր ես քեզ
պատուիրեմ այսօր, առնել [4]զբարին եւ
զհաճոյն՟ առաջի Տեառն Աստուծոյ քո։

[1]Եբր. Սպանանելով սպանցես զնա [2]Եբր. քաղաքին [3]Եբր. վասն [4]Եբր. զուղիղն

ԳԼ. ԺԴ

1 Զի որդիք էք դուք Տեառն Աստուծոյ
ձերոյ, մի՛ ցտիցիք, եւ մի՛ հարկանի-
2 ցէք զճակատ ի վերայ մեռելոյ. Զի ժո-
ղովուրդ ես դու սուրբ Տեառն Աստուծոյ
քո. եւ զքեզ ընտրեաց Տէր [5]Աստուած քո՟
լինել քեզ նմա ժողովուրդ սեպհական
յամենայն ազգաց որ ի վերայ երեսաց
3 երկրի։ Մի՛ ուտիցէք զամենայն զարշելիս։
4 Այս անասունք են զորս ուտիցէք.
արջառ եւ ոչխար ի հօտից, եւ [6]նոխազ
5 յայծեաց, Զեղջերու եւ զայծեամն եւ
զգամէշ եւ զխայրբուզ եւ զայծքաղ եւ
6 զյամոյր եւ զանալութ. Եւ զամենայն ա-
նասուն զթաթահերձ եւ զկճղակաբաշխ
7 եւ զորոճող յանասնոց ուտիցէք. [7]Եւ զայն
մի՛ ուտիցէք որ որոճեն եւ թաթահերձ
եւ կճղակաբաշխ ոչ իցեն. ուղտ եւ նա-
պաստակ եւ ճագար՟. զի որոճեն եւ
կճղակահերձ ոչ են. անսուրբք իցեն
8 նոքա ձեզ։ Եւ խոզ զի թաթահերձ եւ
կճղակաբաշխ է եւ որոճէ ոչ՝ անսուրբ
իցէ նա ձեզ. ի մսոյ նոցա մի՛ ուտիցէք,
եւ ի մեռեալ նոցա մի՛ մերձենայցէք։
9 Եւ այս են զոր ուտիցէք յամենայնէ
որ ի ջուրս են. ամենայնի որոյ իցեն
10 թեւք եւ թեփ, ուտիցէք, Եւ ամենայ-
նի որոյ ոչ իցեն թեւք եւ թեփ, մի՛
ուտիցէք. անսուրբ իցեն նոքա ձեզ։
11 Զամենայն հաւ սուրբ ուտիցէք։
12 Եւ այս է զոր ոչ ուտիցէք ի նոցանէ.
զարծուի եւ զկորճ եւ զգետարծուի,
13 Եւ զցին եւ զանկղ, եւ որ ինչ նման է
14 նոցա, Եւ զորի՝ եւ որ ինչ նման իցէ
15 նմա, Եւ զջայլեամն եւ զբու եւ զճայ
16 եւ զարագիլ, Եւ զփոր եւ զհողամաղ
17 եւ զքաջահաւ, Եւ զսախակ եւ զագռաւ
18 եւ զհաւալուսն, Եւ զքաղաղր, եւ որ
ինչ նման է նոցա, եւ զյոպոպ եւ զչղջիկ։
19 Եւ ամենայն սողուն [8]ի թռչնոց՟ անսուրբ
լիցի ձեզ, եւ մի՛ ուտիցէք ի նոցանէ։
20 Եւ զամենայն թռչուն սուրբ՝ կերիջիք։
21 Եւ զամենայն մեռելոտի մի՛ ուտի-
ցէք, այլ պանդխտին որ է ի քաղաքս
քո տացես զնա եւ կերիցէ, կամ վա-
ճառեսցես օտարոտւոյն. զի ժողովուրդ
սուրբ ես դու Տեառն Աստուծոյ քո։

[5]Յեբր. դ—լ—ե [6]Եբր. այծ [7]Եբր. Սակայն յորոց որոճենն կամ կճղակաբաշխ իցեն՝ մի՛ ուտիցէք զդոսա. զուղտ, զնապաստակ եւ զճագար [8]Եբր. թռչունն

Մի՛ եփեսցես [1]զգառն ի կաթին մօր իւրոյ։
22 Տասանորդս տասանորդեսցես յամե-
նայն արմտեաց սերմանց քոց, զարմտիս
23 անդոյ քոց ամ ըստ ամէ, Եւ կերիցես
[2]զայն առաջի Տեառն Աստուծոյ քո ի
տեղւոջն զոր ընտրեսցէ [3]Տէր Աստուած
քո անուանել զանուն իւր ի վերայ նո-
րա, անդ մատուսցես" զտասանորդս
ցորենոյ քո եւ գինւոյ քո եւ իւղոյ
քո, եւ զանդրանիկս արջառոյ քո եւ
զոչխարի քո. զի ուսցիս երկնչել ի
Տեառնէ Աստուծոյ քումմէ զամենայն
24 աւուրս։ Ապա թէ հեռի իցէ ի քէն ճա-
նապարհն, եւ ոչ կարիցես տանել զայն,
վասն զի հեռի իցէ ի քէն տեղին զոր
ընտրեսցէ Տէր Աստուած քո [4]անուա-
նել զանուն իւր անդ, զի օրհնեաց զքեզ
25 Տէր Աստուած քո, Վաճառեսցես զայն
արծաթոյ, եւ առցես զարծաթն ի ձե-
ռին քում, եւ երթիցես ի տեղին զոր
26 ընտրեսցէ Տէր Աստուած քո. Եւ տացես
զարծաթն ընդ ամենայնի որում ցանկա-
նայցէ անձն քո, արջառոյ կամ ոչխարի
կամ գինւոյ կամ ցքւոյ կամ ամենայնի
որում ցանկանայցէ անձն քո, եւ կերիցես
անդ առաջի Տեառն Աստուծոյ քո, եւ
27 ուրախ լինիցիս դու եւ [5]տուն քո. Եւ
Ղեւտացին որ ի քաղաքս քո, մի՛ թո-
ղուցուս զնա, զի ոչ գոյ նորա բաժին
եւ ոչ ժառանգութիւն ընդ քեզ։
28 Յետ երից ամաց հանիցես զամենայն
տասանորդս արմտեաց քոց, եւ յամին
29 յայնմիկ դիցես զայն ի քաղաքս քո. Եւ
եկեսցէ Ղեւտացին, քանզի ոչ գոյ նո-
րա բաժին եւ ժառանգութիւն ընդ քեզ,
եւ եկն եւ որբ եւ այրի ի քաղաքս քո,
կերիցեն եւ յագեսցին. զի օրհնեսցէ
զքեզ Տէր Աստուած քո յամենայն գործս
քո զոր առնիցես։

ԳԼ. ԺԵ

1 [6]Յեւթն եւթներորդ ամի" արասցես թո-
2 ղութիւն։ Եւ այս իցէ հրաման թողու-
թեանն. Թողցես զամենայն պարտս քո
զոր պարտիցի քեզ ընկեր քո, եւ մի՛ պա-
հանջիցես յընկերէ եւ յեղբօրէ քումմէ,
զի թողութիւն կոչեցեալ է [2]Տեառն Աս-
3 տուծոյ քո"։ Յօտարոտւոյն [7]պահանջիցես
որ ինչ իցէ քո առ նմա, բայց եղբօրն
քում թողութիւն արասցես զպարտուցն
4 քոց"։ Եւ մի՛ լինիցի ի միջի քում կա-
րօտեալ. զի օրհնելով օրհնեսցէ զքեզ
Տէր [2]Աստուած քո" յերկրին զոր Տէր
Աստուած քո տալոց է քեզ ի ժառան-
5 գութիւն ժառանգել զնա։ Եւ եթէ լսե-
լով լուիցես ձայնի Տեառն Աստուծոյ
քո, պահել եւ առնել զամենայն պա-
տուիրանս զոր ես պատուիրեմ քեզ այ-
6 սօր, Զի Տէր Աստուած քո օրհնեաց
զքեզ, որպէս եւ խօսեցաւ քեզ, եւ
տացես փոխ ազգաց բազմաց, եւ դու
ոչ առնուցուս փոխ. եւ տիրեսցես ազ-
գաց բազմաց, եւ քեզ մի՛ տիրեսցեն։
7 Եւ եթէ լինիցի ի միջի քում կարօ-
տեալ յեղբարց քոց, ի միում ի քաղա-
քաց քոց յերկրին զոր տացէ քեզ Տէր
Աստուած քո, մի՛ զարձու ցանիցես զսիրտ
քո, եւ մի՛ կծկիցես զձեռն քո յեղբօրէ
8 քումմէ կարօտելոյ. Այլ ընդարձակելով
ընդարձակեսցես նմա զձեռն քո, եւ տա-
լով տացես նմա փոխ [8]որչափ եւ խնդրի-
9 ցէ ի կարօտութեան իւրում"։ Զգոյշ
լեր անձին քում, գուցէ լինիցի բան
[2]ծածուկ անօրէնութեան ի սրտի քում,
եւ ասիցես, Մերձ է ամն եւթներորդ,
ամն թողութեան, եւ չարակնեսցէ ակն
քո ի վերայ եղբօր քո կարօտելոյ, եւ
ոչ տայցես նմա. եւ բողոքեսցէ զքէն առ
Տէր, եւ լինիցին քեզ այն [9]մեղք մե-
10 ծամեծք։ Այլ պարգեւելով պարգեւես-
ցես նմա, եւ տալով տացես նմա փոխ
որչափ եւ պիտոյ իցէ", եւ մի՛ արտմի-
ցիս ի սրտի քում զկնի տրոյն քոց նմա.
զի վասն բանին այնորիկ օրհնեսցէ զքեզ
Տէր Աստուած քո յամենայն ի գործս
քո, եւ յամենայնի յոր ինչ եւ մխեսցես
11 զձեռն քո։ Զի ոչ պակասէ կարօտեալ
յերկրէ, վասն այնորիկ ես պատուիրեմ
զբանս զայս եւ ասեմ, Ընդարձակելով
ընդարձակեսցես զձեռն քո յեղբայր քո,
յաղքատ եւ ի տառապեալ որ իցէ յերկ-
րին քում։
12 Եւ եթէ վաճառեսցի քեզ եղբայր քո
Եբրայեցի, կամ կին Եբրայեցի, ծառա-
յեսցէ քեզ զվեց ամ. եւ յամին եւթնե-
րորդի արձակեսցես զնա ազատ ի քէն։
13 Եւ յորժամ արձակեսցես զնա[10], ոչ ար-

[1]Եբր. զուլ [2,3]Եբր. [illegible] [3]Եբր. բնակե-
ցուցանել զանուն իւր անդ. [4]Եբր. դնել
[5]Եբր. տուն [6]Եբր. Ի կատարածի եւթն ամաց
[7]Եբր. պահանջիցես. և որ ինչ իցէ քո ընդ եղբօր
քում, թողցէ ձեռն քո

[8]Եբր. ըստ բաւականի կարօտութեանն որում
կարօտիցէ [9]Եբր. մեղք։ (10) Տալով տացես
նմա [10]Եբր. յեւթներորդն ամին, ազատ ի քէն

14 ձակեսցես զնա ունայն. Այլ հանդերձե-
լով հանդերձեսցես զնա յոչխարաց քոց
եւ ի ցորենոյ քումմէ եւ ի հնձանէ քում-
մէ. որպէս եւ օրհնեաց զքեզ Տէր Աս-
15 տուած քո՝ տացես նմա։ Եւ յիշեսցես,
զի եւ դու ծառայ էիր յերկրին Եգիպ-
տացւոց, եւ փրկեաց զքեզ Տէր Աստուած
քո անտի. վասն այնորիկ ես պատուի-
16 րեմ քեզ առնել զբանս զայս։ Ապա թէ
ասիցէ ցքեզ, Ոչ ելանեմ ի քէն. զի սի-
րեաց զքեզ եւ զտուն քո, զի բարի իցէ
17 նմա առ քեզ, Առցես հերիւն, եւ ծա-
կեսցես զունկն նորա ի վերայ [1]սեմոց
դրանն, եւ եղիցի քեզ ստրուկ յաւի-
տեան. եւ զաղախին քո նոյնպէս ա-
18 րասցես։ Եւ մի՛ խիստ թուեսցի առա-
ջի քո յորժամ արձակեսցես զնոսա ա-
զատս ի քէն. զի ամի ամի վարձուք
վարձկանի ծառայեաց քեզ զվեց ամ.
եւ օրհնեսցէ զքեզ Տէր Աստուած քո
յամենայնի զինչ եւ գործեսցես։
19 Զամենայն անդրանիկս որ ծնանիցին
յանդեայս քո եւ ի հօտս քո, զարուն
ի նոցանէ սրբեսցես Տեառն Աստուծոյ
քում. ոչ գործեսցես անդրանկաւ եզին
քո, եւ մի՛ կտրեսցես զանդրանիկս հօ-
20 տից քոց։ Ամ յամէ կերիցես զնա ա-
ռաջի Տեառն ի տեղւոջն զոր ընտրեսցէ
21 Տէր Աստուած քո, դու եւ տուն քո։ Եւ
եթէ արատաւոր իցէ կամ կաղ կամ կոյր,
եւ կամ ամենայն արատ չար զինչ եւ
գուցէ ի նմա, մի՛ զենցես զնա Տեառն
22 Աստուծոյ քում. Այլ ի քաղաքս քո կե-
րիցես զնա. անսուրբն ի քեզ եւ սուրբն
նոյնպէս կերիցեն, իբրեւ զայծեամն կամ
23 զեղջերու։ Բայց զարիւն մի՛ ուտիցես,
յերկիր հեղուցուս զնա իբրեւ զջուր։

## ԳԼ. ԺԶ

1 Զգուշասջիր ամսոյն կանխոց, եւ արաս-
ցես զատիկ Տեառն Աստուծոյ քո. զի
յամսեանն կանխոց [2]ելէք յԵգիպտոսէ ի
2 գիշերի։ Եւ զենցես զզատիկն Տեառն
Աստուծոյ քում, ոչխարս եւ արջառս,
ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տէր Աստուած
3 քո [3]անուանել զանուն իւր անդ. Մի՛
ուտիցէք ընդ նմա խմորուն, զեւթն օր
բաղարջ կերիցես ընդ նմա, հաց չար-
չարանաց. քանզի տագնապաւ ելէք յԵ-
գիպտոսէ. զի յիշիցէք զօրն ելից ձերոց

[1] Եբր. դրան  [2] Եբր. եհան զքեզ Տէր Աստուած քո  [3] Եբր. բնակեցուցանել

յերկրէն Եգիպտացւոց զամենայն աւուրս
4 կենաց ձերոց։ Եւ մի՛ երեւեսցի ի քեզ
խմոր յամենայն սահմանս քո զեւթն օր.
եւ մի՛ ագցի ի մսոյն զոր զենուցուս յե-
5 րեկորեայ յաւուրն առաջնոյ՝ յայգ։ Եւ
մի՛ ժատեսցիս զենուլ զզատիկն ի միում
ի քաղաքաց քոց զորս Տէր Աստուած քո
6 տացէ քեզ. Այլ ի տեղւոջն զոր ընտ-
րեսցէ Տէր Աստուած քո [3]անուանել զա-
նուն իւր ի նմա, անդ զենցես զզատիկն
առ երեկս ընդ արեւմուտս, ի ժամանա-
7 կին յորում ելեր յԵգիպտոսէ։ Եփեսցես
[1]եւ խորովեսցես՝, եւ կերիցես ի տեղ-
ւոջն զոր ընտրեսցէ Տէր Աստուած քո.
եւ դարձցիս ի վաղիւն երթիցես [4]ի տուն
8 քո։ Զվեց օր կերիցես բաղարջ, եւ յա-
ւուրն եւթներորդի [1]ելք տօն Տեառն Աս-
տուծոյ քո. մի՛ գործեսցես ի նմա զամե-
նայն գործ [1]բայց որ ինչ գործիցի անձին՝։
9 Եւթն եւթներորդս համարեսցիս քեզ.
ի սկսանելոյ մանկաղի քո յոճ՝ սկսանիցիս
10 համարել եւթն եւթներորդս։ Եւ արաս-
ցես տօն եւթներորդաց Տեառն Աստու-
ծոյ քում, որչափ կարող իցէ ձեռն քո
ըստ ընչիցն [5]զոր տացէ քեզ՝ որպէս զիարդ
11 օրհնեսցէ զքեզ Տէր Աստուած քո. Եւ
ուրախ լիցիս առաջի Տեառն Աստուծոյ
քո դու եւ ուստր քո եւ դուստր քո, ծա-
ռայ քո եւ աղախին քո, եւ Ղեւտացին
որ ի քաղաքս քո, եւ եկն եւ որբն եւ
այրին որ ի ձեզ, ի տեղւոջն զոր ընտրես-
ցէ Տէր Աստուած [3]անուանել զանուն իւր
12 անդ։ Եւ յիշեսցես զի ծառայ էիր յերկ-
րին Եգիպտացւոց, եւ զգուշասցիս եւ
արասցես զպատուիրանս զայսոսիկ։
13 Տօն տաղաւարահարաց արասցես զեւթն
օր, ի ժողովել քեզ ի կալոյ քումմէ եւ
14 ի հնձանէ քումմէ։ Եւ ուրախ լիցիս ի
տօնի քում դու եւ ուստր քո եւ դուստր
քո, ծառայ քո եւ աղախին քո, եւ Ղեւ-
տացին եւ եկն եւ որբն եւ այրին որ ի-
15 ցեն ի քաղաքս քո։ Զեւթն օր տօնեսցես
Տեառն Աստուծոյ քում ի տեղւոջն զոր
ընտրեսցէ [6]Տէր Աստուած քո ի նմա. եւ
եթէ՝ օրհնեսցէ զքեզ Տէր Աստուած քո
յամենայն արմտիս քո եւ յամենայն գործս
ձեռաց քոց, եւ լինիցիս ուրախ։
16 Զերիս ժամանակս ի տարւոջ յանդիման
լիցի ամենայն արու քո առաջի Տեառն
Աստուծոյ քո ի տեղւոջն զոր ընտրեսցէ
Տէր. ի տօնի բաղարջակերացն, եւ ի

[4] Եբր. ի վրանս  [5] Եբր. տացես  [6] Եբր. Տէր, զի

տօնի եւթներորդացն, եւ ի տօնի տա-
ղաւարահարացն. եւ ոչ երեւեսցիս ա-
ռաջի Տեառն [1]Աստուծոյ քո՛՛ ունայնա-
17 ձեռն. Իւրաքանչիւր ըստ կարի ձեռաց
իւրոց ըստ օրհնութեան Տեառն Աստու-
ծոյ քո զոր ետ քեզ։
18 Դատաւորս եւ ատենադպիրս կացուս-
ցես յամենայն [2]քաղաքս քո զոր Տէր Ա-
ստուած քո տայ քեզ ըստ ցեղից, եւ
դատեսցեն զժողովուրդն դատաստան
19 արդար։ [3]Եւ մի՛ աչառեսցեն երեսաց, եւ
մի՛ առնուցուն՛՛ կաշառս. քանզի կա-
շառ կուրացուցանէ զաչս իմաստնոց,
20 եւ ապականէ զբանս արդարոց։ [4]Ար-
դարութեամբ արասցես զիրաւունս, զի
կեցցէք եւ մտանիցէք ժառանգել՛՛ զեր-
կիրն զոր Տէր Աստուած տայ [5]ձեզ։
21 Մի՛ տնկեսցես քեզ անտառ զամենայն
փայտի առ սեղանով Տեառն Աստուծոյ
22 [6]քո։ Եւ մի՛ արասցես ինչ քեզ ձօնի.
եւ՛՛ մի՛ կանգնեսցես քեզ արձան զոր
ատեաց Տէր Աստուած քո։

## Գլ. ԺԷ

1 Եւ մի՛ զոհիցես Տեառն Աստուծոյ քում
արջառ կամ ոչխար յորում իցէ արատ
ինչ, ըստ ամենայն արատաւոր բանի. զի
պիղծ է այն առաջի Տեառն Աստուծոյ քո։
2 Եւ եթէ գտցի ի միջի քում, ի միում
ի քաղաքացն զոր Տէր Աստուած քո տա-
ցէ քեզ, այր կամ կին որ առնիցէ զչար
առաջի Տեառն Աստուծոյ քո, անցանել
3 զուխտիւ նորա, Եւ երթեալ պաշտիցեն
զաստուածս օտարս, եւ երկիր պագա-
նիցեն նոցա, արեգական կամ լուսնի,
կամ ամենայնի որ իցէ ի զարդուէ երկ-
4 նից, զորս ոչ հրամայեցի. Եւ պատ-
մեսցի քեզ, [7]եւ քննեսցես յոյժ, եւ ա-
հա ճշմարտիւ լեալ իցէ բանն, եւ եղեալ
իցէ պղծութիւնն այն ի մէջ Իսրայելի,
5 Հանցես զայրն զայն կամ զկինն որ ա-
րարին զբանն չար ի դրունս [8]ձեր, եւ
քարկոծեսցէք՛՛ զնոսա քարամբք եւ մեռ-
6 ցին։ Երկուք եւ երիւք վկայիւք մեռցի
որ մեռանիցին, եւ մի՛ մեռցի միով
7 վկայիւ։ Եւ ձեռն վկայիցն եղիցի նախ
ի նա սպանանել զնա, եւ ապա ձեռն
ամենայն ժողովրդեանն. եւ բարձցես
զչարն ի միջոյ [9]ձերմէ։
8 Եւ եթէ [10]վրիպեսցէ ի քէն՛՛ բան ի դա-
տաստանի, ի մէջ արեան եւ արեան, եւ
ի մէջ դատաստանի եւ դատաստանի, եւ
ի մէջ [11]գրգռութեան եւ գրգռութեան,
եւ ի մէջ հակառակութեան եւ հակա-
ռակութեան, բան դատաստանի ի քա-
ղաքս՛՛ քո, եւ յարուցեալ ելցես ի տե-
ղին զոր ընտրեսցէ Տէր Աստուած քո
9 [1]անուանել զանուն իւր՛՛ անդ, Եւ եր-
թիցես առ քահանայսն Ղեւտացիս, եւ
առ դատաւորն որ լինիցի յաւուրսն յայ-
նոսիկ, եւ [12]քննեալ պատմեսցեն քեզ
10 [13]զդատաստանն. Եւ արասցես ըստ հրա-
մանին զոր պատմեսցեն քեզ ի տեղ-
ւոջն իցեն՝ զոր ընտրեսցէ Տէր [1]Աստուած
քո՛՛, եւ զգուշասջիր յոյժ առնել ըստ
ամենայնի որպէս օրինադրեսցի քեզ.
11 Ըստ [14]օրինացն եւ ըստ դատաստանի զոր
ասասցեն քեզ՝ արասցես, եւ մի՛ խո-
տորեսցիս ի բանէն զոր պատմեսցեն քեզ
12 մի՛ յաջ եւ մի՛ յահեակ։ Եւ մարդ ոք
որ առնիցէ հպարտութեամբ առ ի չլսե-
լոյ քահանային որ կայցէ [15]պաշտել յա-
նուն Տեառն Աստուծոյ քո՛՛, կամ դա-
տաւորին [1]որ իցէ յաւուրսն յայնոսիկ՛՛,
մեռցի մարդն այն, եւ բարձցես զչարն
13 յԻսրայելէ։ Եւ ամենայն ժողովրդեանն
լուեալ երկիցէ, եւ մի՛ եւս ամպարշտեսցի։
14 Եւ եթէ մտանիցես յերկիրն զոր Տէր
Աստուած քո տայ քեզ, եւ ժառան-
գեսցես զնա եւ բնակեսցես ի նմա, եւ
ասիցես, Կացուցից ի վերայ իմ [16]իշխան
որպէս եւ այլ ազգք որ շուրջ զինեւ են,
15 Կացուցանելով կացուսցես ի վերայ քո
[16]իշխան, զոր ընտրեսցէ Տէր Աստուած
քո. յեղբարց քոց կացուսցես քեզ [16]իշ-
խան. եւ մի՛ իշխեսցես կացուցանել քեզ
16 զայր օտար որ չիցէ եղբայր քո։ Զի
մի՛ յաճախեսցէ իւր երիվարս, եւ մի՛
դարձուսցէ զժողովուրդն յԵգիպտոս[17]. զի
Տէր ասաց, թէ Մի՛ եւս յաւելուցուք
17 դառնալ ընդ նոյն ճանապարհ։ Եւ մի՛

---

[1] Ոմն. [illegible] [2] Ոմն. դրունս, այսինքն քաղաքս [3] Ոմն. Մի՛ դարձուսցես զիրաւունս, մի՛ աչառեսցես եւ մի՛ առնուցուս [4] Ոմն. Զարդարութեան, զարդարութեան երթիցես զհետ, զի կեցցես եւ ժառանգեսցես [5] Ոմն. քեզ [6] Ոմն. քո զոր առնիցես քեզ։ (22) Եւ [7] Ոմն. եւ լուիցես եւ [8] Ոմն. քո, զայրն կամ զկինն, եւ քարկոծեսցես

[9] Ոմն. քումմէ [10] Այլք՝, դժուարին թուեսցի քեզ [11] Ոմն. հարուածոյ եւ հարուածոյ, բան հակառակութեան ի դրունս [12] Ոմն. հարցցես, եւ [13] Ոմն. զպատգամ դատաստանին [14] Ոմն. օրինացն զոր ուսուցեն քեզ [15] Ոմն. պաշտել անդ զՏէր Աստուած քո [16] Ոմն. թագաւոր [17] Ոմն. այսպէս. յաւելուլ, յաճախել երիվարս

յաճախեսցէ իւր կանայս, զի մի՛ խոտո-
րեսցի սիրտ նորա. եւ արծաթ եւ ոսկի
18 մի՛ կարի յաճախեսցէ իւր։ Եւ եղիցի
յորժամ նստիցի յիշխանութեան իւրում,
[1]գրեսցէ նմա զերկրորդումն՝ օրինացս
այսոցիկ ի մատենի առ ի քահանայիցն
19 Ղեւտացւոց։ Եւ լիցի առ նմա, եւ ըն-
թերցցի զնա զամենայն աւուրս կենաց
իւրոց. զի ուսցի երկնչել ի Տեառնէ Ա-
ստուծոյ [2]քումմէ, պահել զամենայն պա-
տուիրանս [3]զայսոսիկ, եւ առնել զիրա-
20 ւունս զայսոսիկ. Զի մի՛ հպարտանայցէ
սիրտ նորա ի վերայ եղբարց իւրոց, զի
մի անցանիցէ զպատուիրանօքս յաջ կամ
յահեակ. զի երկայնակեաց լիցի յիշխա-
նութեան իւրում ինքն եւ որդիք իւր
ի մէջ [4]որդւոցն Իսրայելի։

## Գլ. ԺԸ

1 Եւ մի՛ լիցի քահանայիցն Ղեւտացւոց,
որդւոցն Ղեւեայ, բաժին եւ ժառան-
գութիւն ընդ Իսրայելի. [5]Երախայրիքն
Տեառն վիճակ նոցա, զայն՝ կերիցեն.
2 Եւ վիճակ մի՛ լիցի նոցա ի մէջ եղբարց
իւրեանց. զի Տէր է վիճակ նոցա, որ-
պէս ասաց նոցա։
3 Եւ այս են իրաւունք քահանային ի
ժողովրդենէ անտի, որք զենուցուն զեն-
լիս. եթէ արջառ իցէ եւ եթէ ոչխար,
տայցէ քահանային զերկն եւ զծնօտն եւ
4 զխախացոյցն։ Եւ [6]զպտուղ ցորենոյ քո
եւ զգինւոյ քո եւ զիւղոյ քո, եւ [6]զպտուղ
5 կտրոց խաշանց քոց տացես նոցա։ Զի
զնա ընտրեաց [7]Տէր յամենայն ցեղիցն
քոց [8]կալ առաջի Տեառն Աստուծոյ քո,
պաշտել եւ օրհնել յանուն նորա՝, նա
եւ որդիք իւր զամենայն աւուրս։
6 Ապա թէ եկեսցէ Ղեւտացին ի [9]մի ի
քաղաքացն քոց յամենայն որդւոցն Իս-
րայելի, ուր իցէ ինքն բնակեալ, եւ ե-
կեսցէ ըստ ցանկութեան անձին իւրոյ
7 ի տեղին զոր ընտրեսցէ Տէր, Պաշտեսցէ
զանուն Տեառն Աստուծոյ իւրոյ, իբրեւ
զամենայն եղբարսն իւր Ղեւտացիս որ
կացցեն անդ առաջի Տեառն [4]Աստու-
8 ծոյ։ Կերիցէ [10]զմասնն հասեալ, բայց
իւրաքանչիւր յազգական վաճառէն՝։
9 Եւ եթէ մտանիցես յերկիրն զոր Տէր
Աստուած տայցէ քեզ, մի՛ ուսանիցիս
առնել ըստ զարշելեաց ազգացն այնո-
10 ցիկ։ Մի՛ գտանիցի ի քեզ որ ածիցէ
զուստր իւր կամ զդուստր իւր զբոցով,
եւ դիւթիցէ դիւթութիւն, եւ հմայիցէ,
11 եւ հաւահարց լինիցի, Եւ կախարդիցէ
կախարդանօք, եւ վհուկ եւ նշանագէտ
12 լինիցի առ ի զմեռեալս հարցանելոյ։ Քան-
զի պիղծ է Տեառն ամենայն որ առնէ
զայն. զի վասն այսպիսի զարշելեաց սա-
13 տակեսցէ զնոսա Տէր ի քէն։ Կատարեալ
լինիցիս առաջի Տեառն Աստուծոյ քո.
14 Զի ազգքն այնոքիկ զորս դու ժառան-
գելոց ես, նոքա հմայից եւ դիւթու-
թեանց անսան. բայց քեզ ոչ այնպէս
ետ հրաման Տէր Աստուած քո։
15 Մարգարէ յեղբարց քոց իբրեւ զիս յա-
րուսցէ քեզ Տէր Աստուած քո, նմա
16 լուիջիք. Ըստ ամենայնի զոր խնդրեցեր
ի Տեառնէ Աստուծոյ քումմէ ի Քորեբ
յաւուրն եկեղեցւոյ, ասէիք, Ոչ եւս
յաւելուցումք լսել զձայն Տեառն Ա-
ստուծոյ մերոյ, եւ զհուրդ զայդ զմեծ
ոչ եւս տեսցուք, զի մի՛ մեռանիցիմք։
17 Եւ ասէ ցիս Տէր, Ուղիղ է ամենայն
18 ինչ զոր խօսեցան. Մարգարէ յարուցից
նոցա յեղբարց իւրեանց իբրեւ զքեզ,
եւ տաց զպատգամս իմ ի բերան նորա,
եւ խօսեսցի ընդ նոսա որպէս եւ պա-
19 տուիրեցից նմա։ Եւ մարդ որ ոչ լուի-
ցէ զոր խօսիցի մարգարէն յանուն իմ՝
ես խնդրեցից վրէժ ի նմանէ։
20 Բայց մարգարէն, եթէ ամպարշտեսցի
խօսել յանուն իմ բան ինչ զոր ես ոչ
հրամայեցի խօսել, եւ կամ թէ խօսիցի
յանուն աստուածոց օտարաց, մեռցի
21 մարգարէն այն։ Ապա թէ ասիցէք ի
սրտի ձերում, Զիա՞րդ գիտասցուք զբանն
22 զոր ոչ խօսեցաւ Տէր. Զոր ինչ խօսիցի
մարգարէն յանուն Տեառն եւ ոչ լինիցի
բանն եւ ոչ դիպիցի, այն բան է զոր ոչ
խօսեցաւ Տէր. ամպարշտութեամբ խօ-
սեցաւ մարգարէն, մի՛[11]թողուցուք նմա՝։

## Գլ. ԺԹ

1 Եւ եթէ սատակեսցէ Տէր Աստուած քո
զազգսն զորոց Տէր Աստուած տացէ քեզ
զերկիրն նոցա, եւ ժառանգեսցես զնա

[1] Ոմբ. գրեսցէ իւր զպատճէն [2] Ոմբ. իւրմէ [3] Ոմբ. օրինացս այսոցիկ [4] Յոմբ. պակասի [5] Ոմբ. զպատարագս Տեառն եւ զժառանգութիւն նորա [6] Ոմբ. զերախայրիս [7] Ոմբ. Տէր Աստուած քո [8] Ոմբ. կալ պաշտել յանուն Տեառն [9] Ոմբ. միոջէ [10] Ոմբ. զբաժին իբրեւ բաժին, թող զվաճառացն նորա ի հայրենիսն [11] Ոմբ. երկիցես ի նմանէ

եւ բնակեսցես ի քաղաքս եւ ի տունս
2 նոցա, Երիս քաղաքս զատուսցես քեզ
ի միջոյ երկրին զոր Տէր Աստուած քո
3 տացէ քեզ. Նկատեսցես քեզ զճանա-
պարհն, եւ ընդ երիս բաժանեսցես քեզ
զսահմանս երկրին քո, զոր բաժանեսցէ
քեզ Տէր Աստուած քո. եւ եղիցի անդ
ապաստան ամենայն սպանողի:
4 Այս սահման եղիցի ամենայն սպանողի
որ փախիցէ անդր եւ ապրեսցի. Որ ոք
հարկանիցէ զընկեր իւր ակամայ, եւ նա
5 ոչ ատեայր զնա յերէկն եւ յեռանդ. Եւ
որ ոք մտանիցէ ընդ ընկերի իւրում ի
մայրի հարկանել փայտ, եւ ամբառնայցէ
զձեռն իւր փայտատաւն հարկանել փայտ,
եւ անկանիցի երկաթն ի մեղեխէ անտի,
եւ գտանիցէ ընկերին եւ մեռանիցի, փա-
խիցէ նա եւ անկցի ի մի ի քաղաքացն այ-
6 նոցիկ եւ կեցցէ, Զի մի՛ պնդեսցի մեր-
ձաւոր արեանն զկնի սպանողին մինչդեռ
այրիցի սիրտ նորա, եւ հասանիցէ նմա,
եթէ հեռագոյն իցէ ճանապարհն, եւ
հարկանիցէ զանձն նորա, եւ նմա չէ
դատաստան մահու, զի ոչ ատեայր զնա
7 յերէկն եւ յեռանդ: Վասն այնորիկ ես
պատուիրեմ քեզ զբանս զայս եւ ասեմ,
Երիս քաղաքս զատուսցես քեզ:
8 Եւ եթէ ընդարձակեսցէ քեզ Տէր Աս-
տուած քո զսահմանս քո որպէս եւ եր-
դուաւ [1]Տէր հարցն քոց, եւ տացէ քեզ
Տէր զամենայն երկիրն զոր խոստացաւ
9 տալ հարցն քոց, Եւ եթէ լուիցես առ-
նել զամենայն պատուիրանս զայսոսիկ
զոր ես պատուիրեմ քեզ այսօր, սիրել
զՏէր Աստուած քո, եւ գնալ յամենայն
ճանապարհս նորա զամենայն աւուրս.
եւ յաւելցես քեզ այլ եւս երիս քաղաքս
10 յայսս յերիսն. Եւ մի՛ հեղցի արիւն ան-
պարտ յերկրին քում, զոր Տէր Աստուած
քո տացէ քեզ ի ժառանգութիւն. եւ մի՛
ոք լիցի ի միջի քում պարտական արեան:
11 Եւ եթէ լինիցի այր որ ատիցէ զընկեր
իւր, եւ դարան գործիցէ նմա, եւ յա-
րիցէ ի վերայ նորա եւ հարկանիցէ զանձն
նորա եւ մեռցի, եւ փախիցի ի մի ի քա-
12 ղաքացն այնոցիկ, Առաքեսցեն ծերակոյտ
քաղաքի նորա եւ առցեն զնա անտի, եւ
մատնեսցեն զնա ի ձեռս մերձաւորի ար-
13 եանն եւ մեռցի: Եւ մի՛ խնայեսցէ ակն
քո ի նա. եւ սրբեսցես զարիւն անպարտ
ի միջոյ Իսրայէլի, եւ բարի լիցի քեզ:

[1] Յեբր. պակասէ

14 Մի՛ փոխեսցես զսահմանս ընկերի քո
զոր հաստատեցին հարք քո ի ժառան-
գութեան քում, զոր ժառանգեսցես
յերկրին զոր Տէր Աստուած քո տացէ
քեզ ի ժառանգութիւն:
15 Ոչ հաստատեսցի մի վկայ վկայել զմար-
դոյ ըստ ամենայն անիրաւութեան եւ
ըստ ամենայն յանցանաց, եւ ըստ ա-
մենայն մեղաց զոր մեղանչէ. ի բերա-
նոյ երկուց [2]եւ երից վկայից հաստա-
տեսցի ամենայն բան:
16 Եւ եթէ կացցէ յառաջ սուտ վկայ
զմարդոյ, եւ չարախօսեսցէ զնմանէ
17 ամպարշտութիւն ինչ, Կացցեն երկոքին
արքն որոց հակառակութիւնն իցէ ա-
ռաջի Տեառն եւ առաջի քահանայիցն եւ
առաջի դատաւորացն որ իցեն յաւուրսն
18 յայնոսիկ. Եւ քննեսցեն դատաւորքն
ճշմարտութեամբ. եւ ահա վկայ անի-
րաւ վկայեաց զանիրաւութիւն, եւ ե-
19 կաց հակառակ եղբօր իւրում. Արասջիք
նմա որպէս խորհեցաւ չար առնել ըն-
կերի իւրում, եւ բարձջիք զչարն ի միջոյ
20 ձերմէ. Եւ այլոցն լուեալ զահի հարկա-
նիցին, եւ մի՛ եւս յաւելուցուն առնել ըստ
21 բանին այնմիկ չարի ի միջի ձերում: Մի՛
խնայեսցէ ակն քո ի նա. անձն ընդ ան-
ձին, ակն ընդական, ատամն ընդ ատա-
ման, ձեռն ընդ ձեռին, ոտն ընդ ոտին:

ԳԼ. Ի

1 Եւ եթէ ելանիցես ի պատերազմ ի վե-
րայ թշնամեաց քոց, եւ տեսանիցես ե-
րիվարս եւ հեծեալս եւ ազգ բազում քան
զքեզ, մի՛ երկնչիցիս ի նոցանէ, զի Տէր
Աստուած քո ընդ քեզ է որ եհան զքեզ
2 յերկրէն Եգիպտացւոց: Եւ եղիցի յոր-
ժամ մերձենայցես ի պատերազմ, մա-
տուցեալ քահանայն խօսեսցի ընդ ազ-
3 գին, Եւ ասասցէ ցնոսա, Լուր, Իսրա-
յէլ. դուք դիմեալ երթայք այսօր ի պա-
տերազմ աւադիկ ի վերայ թշնամեաց
ձերոց, մի՛ լքանիցին սիրտք ձեր, եւ մի՛
երկնչիցիք եւ մի՛ զարհուրիցիք, եւ մի՛
4 խուսիցէք յերեսաց նոցա. Զի Տէր Աս-
տուած [3]մեր երթայ առաջի ձեր ընդ
ձեզ՝ տալ պատերազմ վասն ձեր ընդ
թշնամիս ձեր, ապրեցուցանել զձեզ:
5 Եւ խօսեսցին դպիրքն ընդ ժողո-
վըրդեանն եւ ասասցեն, Այր ոք որոյ
շինեալ իցէ տուն նորաշէն, եւ ոչ իցէ

[2] Եբր. կամ [3] Եբր. ձեր

արարեալ նմա նաւակատիս , գնասցէ եւ
դարձցի ի տուն իւր . գուցէ մեռանիցի
ի պատերազմի , եւ այլ այր առնիցէ նմա
6 նաւակատիս : Եւ այր ոք որոյ անկեալ
իցէ այգի , եւ չիցէ ուրախ լեալ ի նմա-
նէ , գնասցէ եւ դարձցի անդրէն ի տուն
իւր . գուցէ մեռանիցի ի պատերազմի ,
7 եւ այլ այր ուրախ լինիցի ի նմանէ : Եւ
այր ոք որոյ խօսեալ իցէ կին , եւ չիցէ
առեալ զնա , գնասցէ եւ դարձցի ի տուն
իւր . գուցէ մեռանիցի ի պատերազմի ,
8 եւ այլ այր առնուցու զնա : Եւ յաւել-
ցեն դպիրքն խօսել ընդ ժողովրդեանն եւ
ասասցեն , Այր ոք որ երկնչիցի եւ վա-
տասիրտ սրտիւ իցէ , գնասցէ եւ դարձ-
ցի ի տուն իւր . զի մի՛ զանգիտեցուսցէ
9 զսիրտ եղբօր իւրոյ իբրեւ զիւրն : Եւ ե-
ղիցի յորժամ դադարեսցեն դպիրքն ի խօ-
սելոյ ընդ ժողովրդեանն , կացուսցեն իշ-
խանս զօրուն առաջնորդս ժողովրդեանն :
10 Եւ եթէ մերձենայցես ի քաղաք տալ
պատերազմ ընդ նմա , կոչեսցես զնոսա
11 ի խաղաղութիւն : Եւ եղիցի եթէ տայ-
ցեն խաղաղութեան պատասխանի եւ
բացցեն քեզ , եղիցի ամենայն ժողո-
վուրդն որ գտանիցին ի նմա հարկատուք
12 եւ հնազանդեալք քեզ : Ապա թէ ոչ
[1]հնազանդեսցին քեզ , եւ արասցեն ընդ
քեզ պատերազմ , պաշարեսցես զնա .
13 Եւ մատնեսցէ զնա Տէր Աստուած քո
ի ձեռս քո , եւ հարցես զամենայն արու
14 նորա կոտորմամբ սրոյ , Բաց ի կանանց
եւ [2]ի կահուէ եւ յամենայն անասնոյ .
եւ զամենայն ինչ զինչ եւ գտանիցի ի
քաղաքին , եւ զամենայն աւար առցես
քեզ յաւարի . եւ կերիցես զամենայն
զաւար թշնամեաց քոց զոր Տէր Աս-
15 տուած քո տացէ քեզ : Նոյնպէս արա-
ցես ընդ ամենայն քաղաքս ընդ յոյժ հե-
ռաւորս , որք ոչ ի քաղաքաց ազգացն
16 այնոցիկ իցեն։ Բայց ի քաղաքաց ազգացն
այնոցիկ զոր Տէր Աստուած քո տացէ
քեզ զերկիր նոցա ի ժառանգութիւն ,
մի՛ ապրեցուցանիցէք ի նոցանէ զամե-
17 նայն շնչաւոր . Այլ նզովելով նզովեսջիք
զնոսա , զՔետացին եւ զԱմովրհացին եւ
զՔանանացին եւ զՓերեզացին եւ զԽե-
ւացին եւ զՅեբուսացին [3]եւ զԳերգեսա-
ցին", զոր օրինակ պատուիրեաց Տէր Աս-
18 տուած քո . Զի մի՛ ուսուցանիցեն ձեզ
առնել զամենայն գարշութիւնս իւրեանց,
զոր արարին դիցն իւրեանց , եւ մեղան-
չիցէք առաջի Տեառն Աստուծոյ ձերոյ :
19 Եւ եթէ նստեալ պաշարեսցես զքա-
ղաք աւուրս բազումս մարտնչել ընդ
նմա յառնուլ զնա , մի՛ հարկանիցես զծա-
ռաստունկ նորա արկանելով ի նմա եր-
կաթ . այլ կերիցես ի նմանէ , եւ զնա մի՛
հարկանիցես . միթէ մա՞րդ իցէ ձեռա-
տունկն որ յանդի անդ իցէ՝ մտանել յե-
20 րեսաց քոց ի պատնէշ : Այլ զփայտ զոր
գիտիցես թէ չիցէ պտղաբեր , զայն հար-
ցես եւ կոտորեսցես , եւ շինեսցես պատ-
նէշ շուրջ զքաղաքաւն որ տայցէ ընդ
քեզ պատերազմ , մինչեւ մատնեսցի :

## Գլ. ԻԱ

1 Եւ եթէ գտանիցի [4]վիրաւոր յերկրի
քում զոր Տէր Աստուած քո տացէ քեզ
ժառանգել , եւ անկեալ գտանիցի ի դաշտի ,
եւ ոչ գիտիցեն զայն որ խոցեացն զնա .
2 Ելցեն ծերակոյտն քո եւ դատաւորքն
քո , եւ չափեսցեն շուրջ զվիրաւորաւն
3 զվայրս քաղաքացն . Եւ եղիցի քաղաք
որ հուպ իցէ ի վիրաւորն , առցէ ծերա-
կոյտ քաղաքին այնորիկ երինջ մի յար-
ջառոց որ ընդ գործ չիցէ մտեալ եւ լուծ
4 չիցէ ձգեալ . Եւ իջուսցեն ծերակոյտ
ժողովրդեանն զերինջն ի ձոր մի ապա-
ռաժ ուր չիցէ գործեալ եւ ոչ սերմա-
նեալ , եւ [5]կարթակոտոր արասցեն" զե-
5 րինջն ի ձոր անդր : Եւ մատիցեն քա-
հանայքն Ղեւտացիք , զի զնոսա ընտ-
րեաց Տէր Աստուած քո կալ առաջի իւր
եւ օրհնել յանուն նորա . եւ ըստ բերա-
նոյ նոցա վճարեսցի ամենայն հակառա-
6 կութիւն եւ ամենայն դրգութիւն : Եւ
ամենայն ծերակոյտ քաղաքին այնորիկ
որ հուպ իցէ ի վիրաւորն , լուասցեն
զձեռս իւրեանց ի վերայ գլխոյ երինջուն
7 [6]կարթահարելոյ ի ձորն . Եւ պատաս-
խանի տուեալ ասասցեն , Ձեռք մեր ոչ
հեղին զարիւնս զայս , եւ աչք մեր ոչ
8 տեսին . Քաւեա զժողովուրդ քո զԻսրա-
յէլ զոր փրկեցեր , Տէր , զի մի՛ եկեսցէ
արիւնս անպարտ ի վերայ ժողովրդեան
քո Իսրայէլի . եւ քաւեսցի ի նոցանէ
9 արիւնն . Եւ բարձցես դու զարիւնն ան-
պարտ [7]ի ձէնջ . եւ եթէ արասցես զհա-

[1] Եբր. արասցեն խաղաղութիւն ընդ [2] Եբր. ի մանկուոյ [3] Եբր. պակաս

[4] Տե. Թուոց ԼԱ. 19 : [5] Եբր. փողոտեսցեն [6] Եբր. փողոտելոյ [7] Եբր. ի միջոյ քումմէ, զի արասցես զուղիղն առաջի Տեառն

*րին եւ զհաճոյ առաջի Տեառն Աստու-*
*ծոյ քո՚՚։*
10 *Եւ եթէ ելանիցես ի պատերազմ ի վե-*
*րայ թշնամեաց քոց, եւ մատնեսցէ զնո-*
*սա Տէր Աստուած քո ի ձեռս քո, եւ*
11 [1]*աւարեսցես զաւար՚՚ նոցա, Եւ տեսա-*
*նիցես [2]յաւարին կին գեղեցիկ տեսլեամբ,*
*եւ ցանկասցիս նմա, եւ առցես զնա քեզ*
12 *կնութեան, Եւ տարցիս զնա ի տուն քո,*
*եւ [3]գերծցես զգլուխ նորա, եւ որխա-*
13 *ցես զեղնգունս նորա. Եւ հանցես զհան-*
*դերձ գերութեան նորա՚՚, եւ նստցի ի*
*տան քում, եւ լացցէ զհայր եւ զմայր*
*իւր զաւուրս ամսոյ միոյ. եւ ապա*
*մտցես առ նա եւ բնակեսցես ընդ նմա,*
14 *եւ եղիցի քո կին։ Եւ եղիցի եթէ ոչ*
*հաճեսցիս ընդ նա, արձակեսցես զնա*
*ազատ. եւ վաճառելով մի՛ վաճառես-*
*ցես զնա արծաթոյ, եւ մի՛ անարգես-*
*ցես զնա, քանզի լլկեցեր զնա։*
15 *Եւ եթէ լինիցին առն միում երկու կա-*
*նայք, եւ լինիցի ի նոցանէ մին սիրելի*
*եւ միւսն ատելի, եւ ծնանիցին նմա*
*որդիս, սիրելին եւ ատելին, եւ լինիցի*
16 *որդի անդրանիկ ատելւոյն, Եւ եղիցի*
*յաւուր յորում ժառանգեցուցանիցէ որդ-*
*ւոց իւրոց զինչս իւր, մի՛ իշխեսցէ անդ-*
*րանկացուցանել զորդի սիրելւոյն, ան-*
*տես արարեալ զորդի ատելւոյն զանդ-*
17 *րանիկ. Այլ զանդրանիկ ատելւոյն ծա-*
*նիցէ՝ տալ նմա կրկին յամենայնէ որ ինչ*
*գտանիցի նորա. զի նա է սկիզբն [4]որդւոց*
*նորա, եւ նմա անկ է անդրանկութիւնն՚՚։*
18 *Եւ եթէ իցէ ուրուք որդի խեռ եւ*
*անզգամ, եւ ոչ լսիցէ ձայնի հօր եւ մօր*
*իւրոյ, եւ խրատիցեն զնա եւ ոչ անսայ-*
19 *ցէ նոցա. Կալցին զնա հայր եւ մայր*
*նորա, եւ տարցին զնա առ ծերակոյտ*
*քաղաքին իւրեանց եւ ի դուռն տեղւոյն*
20 *իւրեանց. Եւ ասասցեն [5]ցարս քաղաքին*
*իւրեանց, Որդիս մեր այս խեռ է եւ*
*անզգամ, եւ ոչ լսէ ձայնի մերում,*
21 *հանգանակող է եւ արբշիռ։ Եւ քարկո-*
*ծեսցեն զնա արք քաղաքին նորա քա-*
*րամբք եւ մեռցի. եւ բարձջիք զչարն ի*
*միջոյ ձերմէ. եւ լուեալ [6]այլոցն՝ զահի*
*հարկանիցին։*

[1]Եբր. գերեսցես զգերութիւն [2]Եբր. ի գերու-
թեանն [3]Եբր. գերծցէ զգլուխ իւր, եւ սրբեսցէ
զեղնգունս իւր. (13) Եւ հանցէ զհանդերձ
գերութեան իւրոյ [4]Եբր. զօրութեան նորա,
նմա անկ են իրաւունք անդրանկութեանն
[5]Եբր. ցծերս [6]Եբր. ամենայն Իսրայելի

22 *Եւ եթէ հասանիցեն ումեք մեղք մա-*
*հապարտութեան եւ [7]մեռանիցի, կա-*
23 *խեսջիք զնա զփայտէ. Եւ մի՛ ագանիցի*
*մարմին նորա ի փայտին, այլ թաղելով*
*թաղեսջիք զնա ի նմին աւուր. զի անի-*
*ծեալ յԱստուծոյ է ամենայն որ կախիցի*
*զփայտէ. եւ մի՛ պղծիցէք զերկիրն զոր*
*Տէր Աստուած քո տացէ քեզ ի ժա-*
*ռանգութիւն։*

ԳԼ. ԻԲ

1 **Գ***ուցէ տեսեալ զարջառ եւ զոչխար*
*եղբօր քո մոլորեալս ի ճանապարհի, եւ*
*անտես առնիցես զնոսա. այլ դարձու-*
*ցանելով դարձուսցես զնոսա եւ ածցես*
2 *առ եղբայրն քո։ Ապա թէ չիցէ մօտ*
*եղբայրն քո առ քեզ, եւ ոչ ճանաչիցես*
*զնա, ժողովեսցես զնոսա ի տուն քո, եւ*
*եղիցին առ քեզ, մինչեւ խնդրեսցէ զնոսա*
3 *եղբայր քո, եւ տացես ցնա։ Նոյնպէս*
*արասցես զէշ նորա, նոյնպէս արասցես*
*զհանդերձ նորա, նոյնպէս արասցես եւ*
*զամենայն կորուստ եղբօր քո, որ ինչ*
*կորնչիցի ի նմանէ եւ գտանիցես. մի՛*
*իշխեսցես անտես առնել զայն։*
4 *Գուցէ տեսանիցես զէշ եղբօր քո,*
*կամ զեզն նորա անկեալ ի ճանապարհի,*
*եւ զանց առնիցես զնոքօք, այլ յարու-*
*ցանելով յարուսցես ընդ նմա։*
5 *Մի՛ եղիցի հանդերձ առնացի զկա-*
*նամբք, եւ մի՛ զգեցցի այր զգեստ կա-*
*նացի. զի պիղծ է Տեառն Աստուծոյ*
*քում ամենայն որ առնէ զայն։*
6 *Եւ եթէ դիպեսցիս բունոյ հաւուց ա-*
*ռաջի քո ի ճանապարհի, եթէ ի ծառ եւ*
*եթէ ի գետնի, ձագուց կամ ձուոց, եւ*
*մայրն ջեռեալ նստիցի ի վերայ ձագուցն*
*կամ ձուոց, մի՛ առնուցուս զմայրն*
7 *հանդերձ որդւովքն. Արձակելով արձա-*
*կեսցես զմայրն, եւ զորդիսն առցես*
*քեզ. զի բարի լիցի քեզ, եւ բազմօր-*
*եայ լինիցիս [8]ի վերայ երկրի՚՚։*
8 *Եւ եթէ շինեսցես տուն նորաշէն,*
*արասցես պսակ շուրջ զտանեօքն, եւ*
*մի՛ սպանութիւն գործեսցես ի տան քում,*
[9]*զի մի՛ անկանիցի որ անկանելոցն իցէ՚՚*
*ի նմանէ։*
9 *Մի՛ վարեսցես զայգի քո այլ եւ այլ,*
*զի մի՛ [10]սրբեսցին արմտիքն եւ սերմն*
*զոր սերմանիցես ընդ բերլոյ այգւոյն քո*

[7]Եբր. եղիցի պարտաւոր մահու [8]Յեբր. պակասե
[9]Եբր. յանկանել ուրուք [10]Կամ, ապականեսցին

10 Մի՛ վարեսցես զէշ եւ զեզն ի միասին։
11 Մի՛ զգենուցուս այլայլախառն՝ զասր
եւ զկտաւն ի միասին։
12 Ծոպս մանուածոյս արասցես ի վերայ
չորեցունց տանեաց հանդերձից քոց, զոր
եւ զգենուցուս։
13 Եւ եթէ առնուցու ոք կին եւ ամուս-
14 նասցի ընդ նմա, եւ ատեսցէ զնա, Եւ
դիցէ ի վերայ պատճառս բամբասական
բանից, եւ անուն չար հանիցէ զնմանէ
եւ ասիցէ, Զկինս զայս առի, եւ մեր-
ձեցեալ ի սա ոչ գտի զկուսութիւն սորա.
15 Եւ առեալ հայր եւ մայր աղջկանն,
հանցեն զկուսութիւնս աղջկանն առ ծե-
16 րակոյտն ի դուռն. Եւ ասասցէ հայր
աղջկանն ցծերակոյտն, Զդուստր իմ
զայս ետու առն այդմիկ կնութեան, եւ
17 ատեցեալ զսա՝ Դնէ ի վերայ պատճառս
բամբասաւոր բանից՝ եւ ասէ, Ոչ գտի
զկուսութիւն դստեր քո. եւ ահաւասիկ
կուսութիւնք դստեր իմոյ. եւ բացցեն
զհանդերձն առաջի ծերոց քաղաքին այ-
18 նորիկ։ Եւ առցէ ծերակոյտ քաղաքին
այնորիկ զայրն զայն եւ խրատեսցեն զնա,
19 Եւ տուժեսցեն ի նմանէ հարեւր սիկղ,
եւ տացեն հօր աղջկանն, փոխանակ զի
եհան անուն չար զկուսէն Իսրայելաց-
ւոյ. եւ նորին լիցի կին, եւ մի՛ իշխեսցէ
արձակել զնա զամենայն ժամանակս։
20 Ապա թէ ճշմարիտ լիցէ բանն, եւ ոչ
21 գտցին կուսութիւնք աղջկանն, Հանցեն
զաղջիկն առ դուրս [1]հօր իւրոյ, եւ քար-
կոծ արասցեն զնա արք քաղաքին իւրոյ
եւ մեռցի. զի արար անզգամութիւն ի մէջ
որդւոցն Իսրայելի, պոռնկել ի տան հօր
իւրոյ. եւ բարձջիք զչարն ի ձէնջ։
22 Եւ եթէ գտցի այր ննջեցեալ ընդ առ-
նակնոջ, սպանջիք զերկոսեան, զայրն
ննջեցեալ ընդ կնոջն եւ զկինն. եւ բարձ-
ջիք զչարն յԻսրայելէ։
23 Եւ եթէ եղիցի աղջիկ կոյս խօսեցեալ
առն, եւ գտանիցէ զնա այր ոք ի քա-
24 ղաքի եւ ննջեսցէ ընդ նմա, Հանջիք
զերկոսին ի դուռն քաղաքին իւրեանց, եւ
[2]քարկոծեսցեն զնոսա քարամբք եւ մեռ-
ցին. զաղջիկն՝ զի ոչ բողոքեաց ի քա-
ղաքին, եւ զայրն որ լլկեաց զկին ընկերի
իւրոյ. եւ բարձջիք զչարն ի միջոյ ձերմէ։
25 Ապա թէ ի դաշտի գտցէ այր զաղջիկ
ոք խօսեալ առն, եւ բռնաբար ննջեսցէ
ընդ նմա, սպանջիք զայրն որ ննջեաց

[1]Եբր. տան հօր [2]Եբր. քարկոծեսջիք

26 ընդ նմա։ Եւ աղջկանն մի՛ ինչ առնի-
ցէք. զի ոչ է աղջկանն վնաս մահու.
զի որպէս յառնիցէ մարդ ի վերայ ըն-
կերի իւրոյ եւ սպանանիցէ զնա, այն-
27 պէս է իրն։ Զի ի բացի եգիտ զնա. եւ
բողոքեաց աղջիկն խօսեալ, եւ ոչ ոք
էր որ օգնէր նմա։
28 Եւ եթէ գտանիցէ ոք զաղջիկ կոյս
որ չիցէ խօսեալ առն, եւ բռնաբար
29 ննջեսցէ ընդ նմա[3], Տացէ այրն որ
ննջեաց ընդ նմա՝ հօր աղջկանն յիսուն
երկդրամեան արծաթոյ, եւ նորա լիցի
կին[4]. եւ մի՛ իշխեսցէ արձակել զնա
զամենայն ժամանակս իւր։
30 Մի՛ առցէ այր զկին հօր իւրոյ, եւ
մի՛ յայտնեսցէ զծածուկս հօր իւրոյ։

## ԳԼ. ԻԳ

1 **Մ**ի՛ մտցէ մալեալն եւ կրճատեալն յե-
2 կեղեցի [5]Աստուծոյ։ Մի՛ մտցէ պոռնկոր-
դի յեկեղեցի Տեառն[6]։
3 Մի՛ մտցէ Ամոնացի եւ Մովաբացի
յեկեղեցի Տեառն. մինչեւ ցտասն ազգ մի՛
մտցեն յեկեղեցի Տեառն եւ մինչեւ ցյաւի-
4 տեան. Վասն զի ոչ ելին ընդ առաջ ձեր
հացիւ եւ ջրով ի ճանապարհի ելանե-
լոյն ձերոյ յԵգիպտոսէ. եւ զի ի վարձու
կալան վասն քո զԲաղաամ որդի Բէով-
5 րայ [7]ի Միջագետաց անիծանել զքեզ. Եւ
ոչ կամեցաւ Տէր Աստուած քո լսել Բա-
ղաամու, եւ դարձոյց Տէր Աստուած քո
զանէծսն յօրհնութիւնս. զի սիրեաց զքեզ
6 Տէր Աստուած քո։ Մի՛ [8]խօսեսցիս ընդ
նոսա խաղաղութեամբ՝ զամենայն ա-
ւուրս քո մինչեւ ցյաւիտեան։
7 Մի՛ [9]զարշեցուցանիցես զԵդովմայեցին,
զի եղբայր քո է։ Մի՛ [9]զարշեցուցանիցես
զԵգիպտացին, զի պանդուխտ էիր յերկ-
8 րի նորա։ Եթէ լինիցին նոցա որդիք,
յերրորդ ազգի մտցեն յեկեղեցի Տեառն։
9 Եւ եթէ ելանիցես ի պատերազմ բա-
նակել ի վերայ թշնամեաց քոց, զգոյշ
10 լինիջիր յամենայն բանէ չարէ։ Եթէ
իցէ ի քեզ այր որ չիցէ սուրբ ի ցայ-
գութեան բղխմանէ, ելցէ արտաքոյ բա-
11 նակին, եւ մի՛ մտցէ ի բանակն. Եւ
ընդ երեկոյն լուասցէ զմարմին իւր ջրով,

[3]Եբրայեցին՝ յաւելու, եւ գտցին [4]Եբրայեցին յաւելու, զի լլկեաց զնա [5]Եբր. Տեառն [6]Եբրայեցին յաւելու, մինչեւ ցտասն ազգ մի՛ մտցէ յեկեղեցի Տեառն [7]Եբր. ի Բեթորայ Միջագետաց [8]Եբր. խնդրեսցես զխաղաղութիւն եւ զբարութիւն նոցա [9]Եբր. գարշելի համարեսցիս

եւ ընդ մտանել արեւուն մտցէ ի բա-
12նակն։ Եւ տեղի յայտ լիցի քեզ արտա-
քոյ բանակին, եւ ելցես դու արտաքս.
13Եւ ցից լինիցի զգօտւոյ քումմէ. եւ ե-
ղիցի յորժամ նստիցիս արտաքս, փո-
րեսցես նովաւ, եւ ածեալ ծածկեսցես
14զաղտեղութիւն քո։ Զի Տէր Աստուած
քո շրջի ընդ բանակն քո փրկել զքեզ,
եւ մատնել զթշնամիս քո առաջի երե-
սաց քոց. եւ եղիցի բանակն քո սուրբ,
եւ [1]ոչ երեւեսցի ի միջի քում աղտե-
ղութիւն" իրացն, եւ դառնայցէ ի քէն։
15 Մի՛ մատնեսցես զծառայ տեառն իւ-
րում, որ յաւելուցու ի քեզ ի տեառնէ
16իւրմէ. Ընդ քեզ բնակեսցէ եւ ընդ քեզ
զետեղեսցի յամենայն տեղւոջ ուր եւ
հաճոյ իցէ նմա, եւ մի՛ նեղիցէք զնա։
17 Մի՛ լինիցի բոզ ի դստերաց Իսրայելի,
եւ մի՛ պոռնիկ յուստերաց Իսրայելի։
[2]Մի՛ լինիցի ձօնի ի դստերաց Իսրայելի,
եւ մի՛ նուիրեալ ոք յուստերաց Իսրա-
18յելի։" Մի՛ տարցիս զկապէնս պոռնկի,
եւ մի՛ զշանավարս ի տուն [3]Աստուծոյ
քո յամենայն ուխտս. զի պիղծ են ա-
ռաջի Տեառն Աստուծոյ քո երկոքեան։
19 Մի՛ տացես եղբօր քում արծաթ վաշ-
խիւ, եւ մի՛ զկերակուր չարիատիւ, եւ
20մի՛ [4]տոկոսեօք. Զամենայն ինչ փոխ
տայցես օտարին եւ եղբօր քում", զի
օրհնեսցէ զքեզ Տէր Աստուած քո յա-
մենայն ի գործս քո ի վերայ երկրին յոր
մտանելոց ես ժառանգել զնա։
21 Եւ եթէ ուխտիցես ուխտ Տեառն Ա-
ստուծոյ քում, մի՛ յամեսցես հատուցա-
նել զայն. զի պահանջելով պահանջեսցէ
Տէր Աստուած քո ի քէն, եւ լինիցի
22քեզ ի մեղս. Ապա թէ ոչ կամիցիս
23ուխտել, չլինիցի քեզ մեղք։ Որ ինչ
ելանէ ընդ շրթունս քո՝ զգոյշ լինիջիր,
եւ արասցես որպէս ուխտեցեր [3]Աստու-
ծոյ քում, զտուրսն զոր խոստացար
բերանով քով։
24 Եւ եթէ մտանիցես յայգի ընկերի քո,
կերիցես խաղող մինչեւ ցյագել անձին
25քո, բայց յաման մի՛ ամանայցես։ Եւ
եթէ մտանիցես ի հունձս ընկերի քո,
քաղեսցես ձեռօք քովք զհասկն, եւ
մանգաղ մի՛ արկանիցես յոճ ընկերի քո։

[1]Եբր. մի՛ տեսցէ ի քեզ զմերկութիւն [2]Եբր. պոռնիկ
[3]Եբր. Տեառն Աստուծոյ [4]Եբր. տոկոսեօք զամե-
նայն ինչ որ տացի վաշխիւ. (20) Օտարին տացես
վաշխիւ, եւ եղբօր քում մի՛ տացես վաշխիւ

Գլ. ԻԴ

1Եւ եթէ առնուցու ոք կին եւ [5]մտա-
նիցէ առ նա, եւ եղիցի եթէ ոչ գտա-
նիցէ" շնորհս առաջի նորա, զի [6]եգիտ ի
նմա իրս անարգութեան, գրեսցէ նմա
գիր ապահարզանի եւ տացէ ի ձեռս նո-
րա, եւ արձակեսցէ զնա ի տանէ իւրմէ։
2Եւ եթէ [7]գնասցեալ լինիցի առն այլում,
3Եւ ատիցէ զնա այն վերջին, գրեսցէ
նմա գիր մեկնելոյ, եւ տացէ ի ձեռս
նորա, եւ արձակեսցէ զնա ի տանէ
իւրմէ. ապա թէ մեռանիցի այրն նորա
4վերջին որ առ զնա կնութեան, Մի՛
կարասցէ այրն առաջին որ արձակեաց
զնա՝ դառնալ առնուլ զնա իւր կնու-
թեան, յետ պղծելոյն նորա. զի պիղծ
է այն առաջի Տեառն [2]Աստուծոյ քո".
եւ մի՛ պղծիցէք զերկիրն զոր Տէր Ա-
ստուած տացէ ձեզ ի ժառանգութիւն։
5 Եւ եթէ առնուցու ոք կին նորոգ,
մի՛ մտցէ ի պատերազմ, եւ մի՛ անկ-
ցին ի վերայ նորա եւ մի ինչ իրք. այլ
անպարտ լիցի ի տան իւրում[8], եւ ու-
րախ արասցէ զկին իւր զոր առ։
6 Մի՛ [9]գրաւեսցես զվերին եւ զներքին"
երկան. զի զոգիս գրաւէ այնպիսին։
7 Եթէ ըմբռնեսցի այր ոք մարդագող
յեղբարց իւրոց յորդւոցն Իսրայելի, եւ
բռնաբարեալ՝ վաճառեսցէ զնա, մեռցի
գողն, եւ բարձջիք զչարն ի միջոյ ձերմէ։
8 Զգոյշ լեր անձին քում յախտէ բո-
րոտութեան. զգոյշ լինիջիր՝ առնել ըստ
ամենայն օրինին զոր պատմիցեն ձեզ
քահանայքն Ղեւտացիք, զոր օրինակ
պատուիրեցի [10]ձեզ զգուշանալ" առնելոյ։
9Յիշեցէք զոր ինչ արար Տէր Աստուած
քո ընդ Մարիամ ի ճանապարհի ելանե-
լոյն ձերոյ յԵգիպտոսէ։
10 Եւ եթէ պարտելով պարտիցի ընկեր
քո զինչ եւ իցէ, մի՛ մտանիցես ի տուն
11նորա գրաւել ինչ գրաւ. Այլ արտաքոյ
կայցես, եւ այրն առ որում պարտքն
12քո իցեն՝ հանցէ զգրաւն արտաքս։ Եւ
եթէ աղքատ իցէ այրն, մի՛ [11]ագցի ընդ
13գրաւաւն իւրով". Դարձուցանելով դար-
ձուսցես զգրաւն նորա ընդ մտանել արեւու,
եւ ննջեսցէ համբերձիւն իւրով եւ օրհ-

[5]Եբր. լինիցի նմա այր, եւ եղիցի զի ոչ գտցէ կինն
[6]Եբր. եգիտ այրն [7]Եբր. ելցէ կինն ի տանէ նորա եւ
գնասցեալ [8]Եբր. [illegible], մի ամ [9]Եբր. ոք
առնուցու գրաւ զաղօրիս կամ զվերին [10]Եբր. նո-
ցա, զգուշասջիք. [11]Եբր. ագցիս ընդ գրաւաւ նորա

նեսցէ զքեզ. եւ եղիցի քեզ [1]յողորմա-
ծութիւն առաջի Տեառն Աստուծոյ քո։
14 Մի՛ զլասցիս զվարձս անանկին եւ
զկարօտելոյ յեղբարց քոց, կամ յեկաց
15 քաղաքաց քոց։ Նոյն օրին հատուսցես
զվարձս նորա, եւ մի՛ մտանիցէ արե-
գակն ի վերայ այնորիկ. զի անանկ է,
եւ այն է յոյս նորա. եւ մի՛ բողոք
հարկանիցէ զքէն առ Տէր, եւ մի՛ լի-
նիցի այն քեզ ի մեղս։
16 Մի՛ մեռցին հարք ընդ որդւոց, եւ
մի՛ որդիք մեռանիցին ընդ հարց. իւ-
րաքանչիւր ոք ի մեղս իւրում մեռանիցի։
17 Մի՛ խոտորիցես զիրաւունս զեկին եւ
զորբոյ [2]եւ զայրւոյ". եւ մի՛ գրաւեսցես
18 զձորձս այրւոյն. [3]Քանզի ծառայ էիր
դու յերկրին Եգիպտացւոց, եւ փրկեաց
զքեզ Տէր Աստուած քո անտի. վասն
այնորիկ ես պատուիրեմ քեզ առնել
զբանս զայս։
19 Եւ եթէ հնձեսցես զհունձս յանդի
քում, եւ մոռասցի որայ յանդի քում,
մի՛ դառնայցես անդրէն առնուլ զնա.
[2]աղքատին եւ" եկին եւ այրւոյ եւ որ-
բոյ եղիցի այն. զի օրհնեսցէ զքեզ Տէր
Աստուած քո յամենայն ի գործս ձեռաց
20 քոց։ Եւ եթէ կթեսցես ձէթ, մի՛
դարձցիս անդրէն պտղաքաղ առնել զկնի
քո. եկին եւ որբոյ եւ այրւոյ եղիցի
21 այն։ Եւ եթէ կթեսցես զայգի քո, մի՛
ճառաքաղ առնիցես զկնի քո. եկին եւ
22 որբոյ եւ այրւոյ եղիցի այն։ Եւ յիշես-
ցես զի եւ դու ծառայ էիր յերկրին Ե-
գիպտացւոց. վասն այնորիկ ես պա-
տուիրեմ քեզ առնել զբանս զայս։

## ԳԼ. ԻԵ

1 Եւ եթէ լինիցի հակառակութիւն ի
մէջ մարդկան, մատիցեն յատեան եւ
դատեսցին. եւ արդարացուսցեն զար-
դարն եւ պարտաւորեսցեն զամպա-
2 րիշտն։ Եւ եղիցի եթէ արժանի իցէ
զանի ամպարիշտն, [4]նստուսցեն զնա
առաջի դատաւորացն", եւ հարցեն զնա
առաջի [5]նոցա ըստ ամպարշտութեան
3 նորա [6]թուով քառասուն", եւ այլ մի՛
յաւելուցուն. ապա թէ յաւելուցուն հար-
կանել զնա աւելի քան զայն, անար-

[1]Եբր. յարդարութիւն [2]Եբր. պ–կ–ե [3]Եբր. Եւ յիշեսցես զի [4]Եբր. տացէ նմա դատաւորն անկանել ի գետին [5]Եբր. նորա [6]Եբր. թուով.
(3) Քառասնիցս հարցէ

դութիւն լիցի եղբօրն քում առաջի քո։
4 Մի՛ կապեսցես զցռուկ եզին կալոտւոյ։
5 Եւ եթէ բնակեսցեն եղբարք ի միա-
սին, եւ մեռանիցի մի ոք ի նոցանէ, եւ
զաւակ ոչ իցէ նորա, մի՛ լինիցի կին մե-
ռելոյն արտաքոյ առն [7]ումեք որ մեր-
ձաւոր չիցէ նորա". այլ եղբայր առն
իւրոյ մտցէ առ նա, եւ առցէ զնա իւր
6 կնութեան, եւ [8]բնակեսցէ ընդ նմա". Եւ
եղիցի [9]մանուկն որ ծնանիցի՝ հաստա-
տեսցի յանուն վախճանելոյն. եւ մի՛ ջնջես-
7 ցի անուն նորա յԻսրայէլէ։ Ապա թէ ոչ
կամիցի այրն առնուլ զկին եղբօր իւրոյ,
ելցէ կինն ի դուռն անդր առ ծերակոյտն
եւ ասասցէ, Ոչ կամի եղբայր առն իմոյ
կանգնել զանուն եղբօր իւրոյ ի մէջ Իս-
8 րայէլի[10]։ Եւ կոչեսցեն զնա ծերակոյտ
քաղաքին իւրոյ, եւ խօսեսցին ընդ նմա.
եւ նա կացցէ եւ ասիցէ, Ոչ կամիմ առ-
9 նուլ զդա. Եւ մատուցեալ կին եղբօր
նորա առաջի ծերոցն, հանցէ զկօշիկ մի
յոտանէ նորա, եւ թքցէ ընդ երեսս նո-
րա, եւ պատասխանի տուեալ ասասցէ,
Այսպէս արասցեն առն որ ոչ շինիցէ
10 զտուն եղբօր իւրոյ։ Եւ կոչեսցի անուն
նորա ի մէջ Իսրայէլի Տուն բոկացելոյ։
11 Եւ եթէ կռուեսցին արք ընդ միմեանս,
այր ընդ եղբօր իւրում, եւ մատուցեալ
կին միոյ ի նոցանէ թափել զայր իւր ի
ձեռաց այնորիկ որ հարկանիցէն զնա,
եւ ձգեալ զձեռն բուռն հարկանիցէ զեր-
12 կուորեաց նորա, Հատանիցես զձեռն,
եւ մի՛ խնայեսցէ ի նա ակն քո։
13 Մի՛ լինիցի յաման քում կշիռ եւ կշիռ,
14 մեծ կամ փոքր։ Եւ մի՛ լինիցի ի տան
15 քում չափ եւ չափ, մեծ կամ փոքր։ Կշիռ
ստոյգ եւ արդար եղիցի քեզ, եւ չափ
ստոյգ եւ արդար եղիցի քեզ, զի բազ-
մօրեայ եղիցիս ի վերայ երկրին զոր Տէր
Աստուած քո տացէ քեզ [2]ի ժառանգու-
16 թիւն։ Զի պիղծ է Տեառն Աստուծոյ
քում ամենայն որ առնէ զայն, եւ ա-
մենայն որ առնէ զանիրաւութիւն։
17 Յուշ լիցի քեզ զոր արարն քեզ Ամա-
ղէկ ի ճանապարհի ելանելոյն քո յԵ-
18 գիպտոսէ. Զիարդ ընդդէմ եկաց քեզ ի
ճանապարհին, եւ կրճատեաց զվերջն
քո եւ զաշխատեալսն զկնի քո, եւ դու
քաղցեալ եւ աշխատեալ էիր, եւ ոչ

[7]Եբր. օտարի [8]Եբր. հաստուսցէ նմա զպարտս տագեր [9]Եբր. անդրանիկն [10]Եբր. այսպէս յաւելու, ոչ կամի հաստուցանել ինձ զպարտս տագեր

19 երկնաւ յԱստուծոյ։ Եւ եղիցի յորժամ
հանգուցանիցէ զքեզ Տէր Աստուած քո
յամենայն թշնամեաց քոց որ շուրջ զքեւ
իցեն յերկրին զոր Տէր Աստուած քո
տայց քեզ վիճակաւ ի ժառանգութիւն,
ջնջեսցես զանուն Ամաղեկայ ի ներքոյ
երկնից, եւ մի՛ մոռասցիս։

Գլ. ԻԶ

1 Եւ եղիցի եթէ մտանիցես յերկիրն զոր
Տէր Աստուած քո տայ քեզ ի ժառան-
գութիւն, եւ ժառանգեսցես զնա եւ
2 բնակեսցես ի նմա, Առցես զառաջինս
պտղոց զերկրին քո զոր Տէր Աստուած
քո տացէ քեզ, եւ արկցես ի կողով,
եւ գնասցես ի տեղին զոր ընտրեսցէ Տէր
Աստուած [1]անուանել զանուն իւր անդ.
3 Եւ երթիցես առ քահանայն որ կայցէ
յաւուրսն յայնոսիկ, եւ ասասցես ցնա,
Գոհանամ այսօր զՏեառնէ Աստուծոյ
[2]իմմէ, զի մտի յերկիրն զոր երդուաւ
4 Տէր հարցն մերոց տալ մեզ։ Եւ առցէ
քահանայն զկողովն ի ձեռաց քոց, եւ
դիցէ զնա առաջի սեղանոյն Տեառն Աս-
5 տուծոյ քո. Եւ պատասխանի տուեալ
ասասցես առաջի Տեառն Աստուծոյ քո.
[3]ԶԱսորիս եթող" հայր իմ եւ էջ յԵգիպ-
տոս, եւ պանդխտեցաւ անդ սակաւ ինչ
թուով, եւ եղեւ անդ յազգ մեծ, եւ
6 բազմացաւ անդ յոյժ յոյժ. Եւ չարչա-
րեցին զմեզ Եգիպտացիքն, լլկեցին զմեզ
եւ եդին ի վերայ մեր գործ խստութեան.
7 Եւ աղաղակեցաք առ Աստուած հարցն
մերոց. եւ լուաւ Տէր ձայնի մերում,
եւ ետես զտառապանս մեր եւ զաշխա-
8 տութիւն մեր եւ զնեղութիւն մեր. Եւ
եհան զմեզ Տէր յԵգիպտոսէ ինքնին [4]զօ-
րութեամբ մեծաւ, եւ" հզօր ձեռամբ եւ
բարձր բազկաւ, եւ մեծամեծ տեսլեամբք
9 եւ նշանօք եւ արուեստիւք. Եւ ած զմեզ
ի տեղիս յայս, եւ ետ մեզ զերկիրս զայս,
10 երկիր՝ որ բղխէ զկաթն եւ զմեղր։ Եւ
արդ աւասիկ բերի [5]զպտուղ արդեանց
երկրին զոր ետ ինձ Տէր, երկիր՝ որ
բղխէ զկաթն եւ զմեղր։ Եւ" երկիր
պագցես անդ առաջի Տեառն Աստուծոյ
11 քո. Եւ ուրախ լիցիս անդ յամենայն
բարութիւնսն զոր ետ քեզ Տէր Աս-
տուած քո եւ տան քում, դու եւ Ղեւ-
տացին եւ պանդուխտն որ ի քեզ։
12 Եւ եթէ կատարեսցես տասանորդել
զամենայն տասանորդս երկրի քո, յա-
մին [6]երկրորդի կրկին տասանորդեսցես"
Ղեւտացւոյն, եւ եկին եւ որբոյ եւ այր-
ւոյ. եւ կերիցեն ի քաղաքս քո եւ յա-
13 գեսցին. Եւ ասասցես առաջի Տեառն
Աստուծոյ քո, Սրբեցի ի բաց զսրբու-
թիւնսն ի տանէ իմմէ, եւ ետու զայն
Ղեւտացւոյն եւ եկին եւ որբոյ եւ այրւոյ,
ըստ ամենայն պատուիրանաց [7]Տեառն
Աստուծոյ" զոր պատուիրեալ էր ինձ.
ոչ անցի զպատուիրանաւ քով եւ ոչ մո-
14 ռացայ. Եւ ոչ կերայ ի վշտաց ի նոցա-
նէ եւ ոչ ընծայեցի ի նոցանէ պղծոյն,
եւ ոչ ետու ի նոցանէ մեռելոյ. լուայ
ձայնի Տեառն Աստուծոյ իմոյ. եւ արա-
15 րի որպէս պատուիրեցեր ինձ։ Արդ հայ-
եաց ի սրբոյ բնակութենէ քումմէ յերկ-
նից, եւ օրհնեա զժողովուրդ քո զԻս-
րայէլ, եւ զերկիրն զոր ետուր [8]նոցա.
որպէս երդուար հարցն մերոց, տալ մեզ
զերկիր որ բղխէ զկաթն եւ զմեղր։
16 Յաւուր յայսմիկ պատուիրեաց քեզ
Տէր Աստուած քո առնել զամենայն ի-
րաւունս զայսոսիկ եւ զդատաստանս.
[9]պահեսջիք եւ արասջիք" զոսա յամե-
նայն սրտէ [2]ձերմէ եւ յամենայն անձնէ
17 [2]ձերմէ։ ԶՏէր [4]Աստուած քո" ընտրեա
այսօր լինել քեզ Աստուած եւ [10]գնաս-
ջիք ի ճանապարհս նորա, եւ պահեսջիք
զիրաւունս եւ զդատաստանս նորա" լսել
18 ձայնի նորա. Եւ Տէր ընտրեաց զքեզ
այսօր լինել նմա ժողովուրդ սեպհական
որպէս եւ խօսեցաւ քեզ, պահել զա-
19 մենայն պատուիրանս նորա, Եւ լինել
քեզ ի վեր քան զամենայն [11]ազգս. որ-
պէս արար զքեզ" անուանի եւ բարգա-
ւաճ եւ փառաւոր, լինել քեզ ժողո-
վուրդ սուրբ Տեառն Աստուծոյ քում,
որպէս եւ խօսեցաւ քեզ։

Գլ. ԻԷ

1 Եւ պատուիրեաց Մովսէս եւ ծերա-
կոյտն Իսրայէլի եւ ասէն, Պահեցէք
զամենայն պատուիրանս զոր ես պատ-

[1] Եբր. քո բնակեցուցանել [2] Եբր. քումմէ [3] Եբր. Ասորի թափառական էր [4] Եբր. [illegible]
[5] Եբր. զերախայրիս արդեանց երկրին զոր ետուր ինձ, Տէր։ Եւ դիցես զայն առաջի Տեառն Աստուծոյ քո, եւ

[6] Եբր. երրորդի, յամին տասանորդաց, տացես [7] Եբր. քոց [8] Եբր. մեզ [9] Եբր. պահեսջիր եւ արասջիր [10] Եբր. գնալ ի ճանապարհս նորա եւ պահել զիրաւունս նորա, եւ զպատուիրանս նորա, եւ զդատաստանս նորա, եւ [11] Եբր. ազգս զորս արար՝

2 ուխտեմ ձեզ այսօր։ Եւ եղիցի յաւուր
յորում անցանիցես ընդ Յորդանան, յեր-
կիրն զոր Տէր Աստուած քո տացէ քեզ՝
կանգնեսցես անդ քարինս մեծամեծս,
3 եւ բռեսցես զնոսա բռով. Եւ գրեսցես
ի վերայ [1]քարանցն զամենայն պատգամս
զօրինացս այսոցիկ, յորժամ [2]անցանի-
ցէք ընդ Յորդանան, ի ժամանակի իբ-
րեւ մտանիցէք" յերկիրն զոր Տէր Ա-
ստուած [3]հարցն ձերոց" տացէ քեզ, եր-
կիր՝ որ բղխէ զկաթն եւ զմեղր. որպէս
խոստացաւ Տէր Աստուած հարցն քոց
4 տալ քեզ։ Եւ եղիցի յորժամ անցանի-
ցէք ընդ Յորդանան, կանգնեսջիք զքա-
րինսն զայնոսիկ զոր ես պատուիրեմ
ձեզ այսօր՝ ի լերինն Գեբաղ, եւ բռես-
5 ջիք զնոսա բռով։ Եւ շինեսցես անդ սե-
ղան Տեառն Աստուծոյ քո, սեղան ի քա-
րանց. եւ մի՛ հպեսցի ի նոսա երկաթ.
6 [4]Բոլորակ վիմօք շինեսցես զսեղանն
Տեառն Աստուծոյ քո. եւ հանցես ի վե-
րայ նորա ողջակէզս Տեառն Աստուծոյ
7 քում. Եւ զենցես [5]անդ զենումն փրկու-
թեան Տեառն Աստուծոյ քում, եւ կե-
րիցես եւ յագեսցիս" անդ, եւ ուրախ
8 լիցիս առաջի Տեառն Աստուծոյ քո. Եւ
գրեսցես ի վերայ քարանցն զամենայն
զօրէնս զայսոսիկ յայտնապէս յոյժ։
9 Եւ խօսեցաւ Մովսէս եւ քահանայքն
[6]եւ Ղեւտացիք ընդ ամենայն Իսրայելի
եւ ասեն, Լուռ լեր եւ լուր, Իսրայէլ.
յաւուր յայսմիկ եղեր ժողովուրդ Տեառն
10 Աստուծոյ քո. Եւ լուիցես ձայնի Տեառն
Աստուծոյ քո, եւ արասցես զամենայն
պատուիրանս նորա եւ զիրաւունս նո-
րա զոր ես պատուիրեմ քեզ այսօր։
11 Եւ պատուիրեաց Մովսէս ժողովրդեանն
12 յաւուր յայնմիկ եւ ասէ, Սոքա կացցեն
օրհնել զժողովուրդն ի լերինն Գարի-
զին, յորժամ անցանիցէք ընդ Յորդա-
նան. Շմաւոն, Ղեւի, Յուդա, Իսա-
13 քար, Յովսէփ եւ Բենիամին. Եւ սոքա
կացցեն ի վերայ անիծիցն ի լերինն Գե-
բաղ. Ռուբէն, Գադ, Ասեր, Զաբու-
ղոն, Դան եւ Նեփթաղիմ։
14 Եւ պատասխանի տուեալ Ղեւտաց-
ւոցն ասիցեն մեծաձայն ամենայն Իս-
15 րայելի, Անիծեալ լիցի մարդն որ արաս-
ցէ դրօշեալ եւ ձուլածոյ, զի պիղծ է
Տեառն ձեռագործ ճարտարի, եւ դնիցէ
զնա ի թաքստեան. եւ պատասխանի
տուեալ ժողովրդեանն՝ ասասցեն, Եղի-
16 ցի։ Անիծեալ՝ որ անարգեսցէ զհայր իւր
կամ զմայր իւր. եւ ասասցէ ամենայն
17 ժողովուրդն, Եղիցի։ Անիծեալ՝ որ փո-
խեսցէ զսահմանս ընկերի իւրոյ. եւ ա-
սասցէ ամենայն ժողովուրդն, Եղիցի։
18 Անիծեալ՝ որ խոտորեսցէ զիրաւունս ե-
կին եւ որբոյ եւ այրւոյ. եւ ասասցէ
19 ամենայն ժողովուրդն, Եղիցի։ Անիծեալ՝
որ մոլորեցուսցէ զկոյրն ի ճանապարհէ.
եւ ասասցէ ամենայն ժողովուրդն, Ե-
20 ղիցի։ Անիծեալ՝ որ ննջեսցէ ընդ կնոջ
հօր իւրոյ, զի յայտնեաց զաներեւոյթս
հօր իւրոյ. եւ ասասցէ ամենայն ժողո-
21 վուրդն, Եղիցի։ Անիծեալ՝ որ ննջեսցէ
ընդ ամենայն անասնոյ. եւ ասասցէ ա-
22 մենայն ժողովուրդն, Եղիցի։ Անիծեալ՝
որ ննջեսցէ ընդ քեռ իւրում, որ առ ի
հօրէ իցէ կամ առ ի մօրէ. եւ ասասցէ
24 ամենայն ժողովուրդն, Եղիցի։[7] Անի-
ծեալ՝ որ հարկանիցէ զընկեր իւր նեն-
գութեամբ. եւ ասասցէ ամենայն ժո-
25 ղովուրդն, Եղիցի։ Անիծեալ՝ որ առ-
նուցու կաշառ հարկանել զանձն [8]արեան
արդարոյ". եւ ասասցէ ամենայն ժողո-
26 վուրդն, Եղիցի։ Անիծեալ ամենայն
մարդ՝ որ ոչ կացցէ յամենայն բանս օ-
րինացս այսոցիկ առնել զնոսա. եւ ա-
սասցէ ամենայն ժողովուրդն, Եղիցի։

## ԳԼ. ԻԸ

1 Եւ եղիցի եթէ լսելով [9]լուիցէք ձայնի
Տեառն Աստուծոյ [3]մերոյ, զգուշանալ
եւ առնել զամենայն պատուիրանս նո-
րա, զոր ես պատուիրեմ [10]ձեզ այսօր,
տացէ զքեզ Տէր Աստուած քո ի վեր քան
2 զամենայն ազգս երկրի։ Եւ եկեսցեն ի
վերայ քո ամենայն օրհնութիւնքս այ-
սոքիկ եւ գտցեն զքեզ, եթէ լուիցես
3 ձայնի Տեառն Աստուծոյ քո։ Օրհնեալ
լիցիս դու ի քաղաքի, եւ օրհնեալ յան-
4 դի. Օրհնեալ լիցին ծնունդք որովայնի
քո, եւ արդիւնք երկրի քո, անդեայք ար-
ջառոց քոց, եւ հօտք ոչխարաց քոց.
5 Օրհնեալ լիցին շտեմարանք քո եւ համ-
6 բարք քո. Օրհնեալ լիցիս դու յելանել
7 եւ ի մտանել քում. Մատնեսցէ Տէր

[1] Եբր. նոցա [2] Եբր. անցանիցես մտանել [3] Եբր. քո [4] Եբր. Ողջ [5] Եբր. խաղաղականս եւ կերիցես [6] Յ Եբր. [illegible]

[7] Եբրայեցին յաւելու, (23) Անիծեալ՝ որ ննջիցէ ընդ զոքանչի իւրում. և ասասցէ ամենայն ժողովուրդն, Եղիցի։ [8] Եբր. անպարտ արեան [9] Եբր. լուիցես [10] Եբր. քեզ

[1]Աստուած քո զԹշնամիս քո եւ զհա-
կառակորդս՝ քո խորտակեալս առաջի
երեսաց քոց. ընդ մի ճանապարհ եկեսցեն
առ քեզ, եւ ընդ եւԹն ճանապարհ փա-
8 խիցեն յերեսաց քոց։ Առաքեսցէ Տէր ի
վերայ քո օրհնուԹիւն, ի շտեմարանս
քո եւ յամենայն յինչ ուր մխեսցես զձեռն
քո ի վերայ երկրին զոր Տէր Աստուած
9 քո տացէ քեզ։ Կանգնեսցէ զքեզ Տէր
Աստուած քո իւր ժողովուրդ սուրբ,
որպէս երդուաւ [2]հարցն քոց՝, եԹէ լուի-
ցես ձայնի Տեառն Աստուծոյ քո, եւ
10 գնասցես ի ճանապարհս նորա. Եւ տես-
ցեն ամենայն ազգք երկրի զի անուն
Տեառն կոչեցեալ է ի վերայ քո, եւ երկ-
11 նչիցեն ի քէն։ Եւ բազմացուսցէ զքեզ
Տէր [3]Աստուած քո՝ ի բարուԹիւնս
ծննդեամբք որովայնի քո եւ արդեամբք
երկրի քո եւ ծննդեամբք խաշանց քոց
ի վերայ երկրին զոր երդուաւ Տէր հարցն
քոց տալ քեզ, [3]ըստ աւուրց երկնից ի
12 վերայ երկրի։՝ Բացցէ քեզ Տէր զգանձն
բարուԹեան իւրոյ զերկինս, տալ անձ-
րեւ ի ժամանակի իւրում երկրին քո,
օրհնել զամենայն գործս ձեռաց քոց.
եւ տացես փոխ ազգաց բազմաց, եւ
13 դու ոչ առնուցուս փոխ։ [3]Եւ իշխեսցես
ազգաց բազմաց, եւ քեզ մի՛ իշխես-
ցեն.՝ հաստատեսցէ զքեզ Տէր Աստուած
քո ի գլուխ՝ եւ ոչ ի վերջ, եւ եղիցիս
ի վեր՝ եւ ոչ ի խոնարհ, եԹէ լուիցես
պատուիրանաց Տեառն Աստուծոյ քո,
զոր ես պատուիրեմ քեզ այսօր պահել
14 եւ առնել, Եւ ոչ անցանիցես զամենայն
բանիւք զոր ես պատուիրեմ քեզ այսօր՝
ոչ յաջ եւ ոչ յահեակ, երԹալ զհետ
աստուածոց օտարաց պաշտել զնոսա։
15 Եւ եղիցի եԹէ ոչ լուիցես ձայնի
Տեառն Աստուծոյ քո, պահել եւ առնել
զամենայն պատուիրանս նորա զոր ես
պատուիրեմ քեզ այսօր, եկեսցեն ի վե-
րայ քո [4]անէծքս այսոքիկ եւ հասցեն
16 քեզ։ Անիծեալ լիցիս դու ի քաղաքի եւ
17 անիծեալ յանդի. Անիծեալ շտեմարանք
18 քո եւ համբարք քո. Անիծեալ ծնունդք
որովայնի քո եւ արդիւնք երկրի քո, եւ
անդեայք արջառոց քոց եւ հօտք ոչխա-
19 րաց քոց. Անիծեալ լիջիր դու ի մտա-
20 նել, եւ անիծեալ յելանել։ Առաքեսցէ
քեզ Տէր [5]զնուազուԹիւն եւ զկարօ-
տուԹիւն եւ ծախս՝ ի վերայ ամենայնի
յոր մխեսցես զձեռն քո, եւ զոր ինչ
առնիցես, մինչեւ սատակեսցէ զքեզ Տէր,
մինչեւ կորուսցէ զքեզ վաղվաղակի վասն
չարուԹեան գնացից քոց, զի Թողեր
21 զիս։ Խանձեցուսցէ Տէր ի քեզ մահ,
մինչեւ սատակեսցէ զքեզ Տէր յերկրէն
յոր դու մտանելոց ես ժառանգել զնա։
22 Հարցէ զքեզ Տէր [6]տարակուսանօք, եւ
ջերմամբ եւ սարսռով, եւ խեԹիւք եւ
երկիւղիւ, եւ խորշակաւ եւ գունով,
եւ հալածեսցեն զքեզ մինչեւ կորուսցեն
23 զքեզ։ Եւ եղիցին ի վերայ գլխոյ քո
երկինք պղնձի, եւ երկիր ի ներքոյ քո՝
24 երկաԹի։ Տացէ Տէր զանձրեւ երկրի քո
փոշի, եւ հող յերկնից իջցէ ի վերայ քո,
մինչեւ սատակեսցէ զքեզ եւ կորուսցէ
25 զքեզ։ Տացէ զքեզ Տէր ի պարտուԹիւն
առաջի Թշնամեաց քոց. ընդ մի ճանա-
պարհ ելցես ի վերայ նոցա, եւ ընդ եւԹն
ճանապարհ փախիցես յերեսաց նոցա.
եւ եղիցիս ցրուեալ ընդ ամենայն Թա-
26 գաւորուԹիւնս երկրի. Եւ [7]եղիցին մե-
ռեալք ձեր՝ կերակուր Թռչնոց երկնից
եւ գազանաց երկրի, եւ ոչ ոք իցէ որ
27 ընդոստուցանիցէ։ Հարցէ զքեզ Տէր կե-
ղով Եգիպտացւոցն եւ Թանչիւք, եւ
զայրացեալ քոսով եւ մնով, զի մի՛ կա-
28 րասցես բժշկել։ Հարցէ զքեզ Տէր յի-
մարուԹեամբ եւ կուրուԹեամբ եւ ապ-
29 շուԹեամբ մտաց. Եւ խարխափեսցես ի
մէջօրէի որպէս խարխափիցէ կոյր ի խա-
ւարի, եւ ոչ ուղղեսցես զճանապարհս
քո. եւ եղիցիս յամժամ զրկեալ եւ
յափշտակեալ զամենայն աւուրս, եւ ոչ
30 ոք իցէ որ օգնիցէ քեզ։ [8]Առնուցուս
կին, եւ այլ այր հանիցէ զնա ի քէն՝.
շինեսցես տուն, եւ մի՛ բնակեսցես ի
նմա. անկեսցես այգի, եւ մի՛ կԹեսցես
31 զնա. Արջառ քո սպանեալ առաջի քո,
եւ մի՛ կերիցես ի նմանէ. էշ քո յափշտա-
կեալ ի քէն, եւ մի՛ դարձցի առ քեզ.
ոչխար քո մատնեալ Թշնամեաց քոց,
32 եւ ոչ ոք իցէ որ օգնիցէ քեզ։ Ուստերք
քո եւ դստերք քո մատնեալք ազգի օ-
տարի, եւ աչք քո կկոցեալ հայիցեն ի
33 նոսա[9], եւ ոչ հասանիցէ ձեռն քո։ Զպտու

[1]Եբր. զԹշնամիս քո յարուցեալս ի վերայ [2]Եբր. քեզ [3]Եբր. պոչ [4]Եբր. ամենայն անէծքս

[5]Եբր. անէծս եւ տառապանս եւ կշտամբանս
[6]Եբր. ծիւրուԹեամբ [7]Եբր. եղիցի դի քո
[8]Եբր. խօսեսցիս կին, եւ այլ այր ննջեսցէ ընդ նմա
[9]Եբր. յետ յայն յաւելու, զոր ամենայն

*երկրի քո եւ զամենայն վաստակս քո*
*կերիցէ ազգ զոր դու ոչ գիտիցես, եւ*
*եղիցես զրկեալ եւ խորտակեալ զամե-*
34 *նայն աւուրս. Եւ եղիցես յիմարեալ*
*վասն տեսլեանց աչաց քոց զոր տեսա-*
35 *նիցես։ Հարցէ զքեզ Տէր չարաչար կե-*
*ղով ի ծունկս եւ ի սրունս, եւ ոչ կա-*
*րասցես բժշկել ի թաթից ոտից քոց մին-*
36 *չեւ ցգլուխ քո։ Տարցի զքեզ Տէր եւ*
*[1]զիշխանսն զոր կացուսցես ի վերայ քո՝*
*յազգ զոր ոչ գիտիցես դու եւ ոչ հարք*
*քո. եւ պաշտեսցես անդ զաստուածս*
*օտարս՝ զփայտեղէնս եւ զքարեղէնս։*
37 *Եւ եղիցես յառակ եւ ի ցոյց եւ ի զրոյց*
*ի մէջ ամենայն ազգաց յոր տանիցի զքեզ*
38 *Տէր անդր։ Սերմն բազում հանցես յան-*
*դի, եւ սակաւ ժողովեսցես. զի կերի-*
39 *ցէ զայն մարախ։ Այգիս տնկեսցես եւ*
*գործեսցես, եւ զգինի ոչ արբցես, եւ*
*մի՛ [2]ուրախ լինիցիս ի նմանէ". զի կե-*
40 *րիցէ զայն որդն։ Եւ եղիցին ձիթենիք*
*յամենայն սահմանս քո, եւ իւղով ոչ*
*օծցիս. զի թափեսցին ձիթենիքն քո։*
41 *Ուստերս եւ դստերս ծնցիս, եւ ոչ լի-*
*նիցին քո. քանզի երթիցեն ի գերու-*
42 *թիւն։ Զամենայն ծառաստանս քո եւ*
*զարդիւնս երկրի քո հարցէ թրթուր։*
43 *Եկն որ ի քեզ իցէ, ելցէ քան զքեզ*
*վեր ի վեր, եւ դու իջցես վայր ի վայր.*
44 *Նա տացէ քեզ փոխ, եւ դու ոչ տա-*
*ցես նմա փոխ. նա եղիցի գլուխ, եւ*
45 *դու եղիցիս վերջ։ Եւ եկեսցեն ի վերայ*
*քո [3]անէծքս այսոքիկ եւ հալածեսցեն*
*զքեզ եւ հասցեն քեզ, մինչեւ սատա-*
*կեսցեն զքեզ եւ մինչեւ կորուսցեն*
*զքեզ. զի ոչ լուար ձայնի Տեառն Ա-*
*ստուծոյ քո, պահել զպատուիրանս նո-*
*րա եւ զիրաւունս նորա զոր պատուի-*
46 *րեաց քեզ. Եւ եղիցին ի քեզ նշանք եւ*
*արուեստք եւ ի զաւակի քում մինչեւ*
47 *ցյաւիտեան։ Փոխանակ զի ոչ պաշտե-*
*ցեր զՏէր Աստուած քո ուրախութեամբ*
*եւ ճշմարիտ սրտիւ վասն [4]բազմութեանց*
48 *ամենեցուն", Պաշտեսցես զթշնամիս քո*
*զորս առաքեսցէ ի վերայ քո Տէր, ի սով*
*եւ ի ծարաւ եւ ի մերկութիւն եւ ի նուա-*
*զութեան ամենայնի. եւ դիցէ անուր*
*երկաթի ի պարանոցի քում մինչեւ սա-*
49 *տակեսցէ զքեզ։ Ածցէ ի վերայ քո ազգ*
*ի հեռաստանէ ի ծագաց երկրի իբրեւ*

*զխոյանալ արծուոյ, ազգ՝ զորոյ ոչ լսի-*
50 *ցես զձայն նորա, Ազգ ժպիրհ երեսօք*
*որ ոչ աչառիցէ երեսաց ծերոյ, եւ ոչ*
51 *ողորմեսցի տղայոյ. Եւ կերիցէ զծնունդս*
*խաշանց քոց եւ զարդիւնս երկրի քո.*
*եւ ոչ թողուցու քեզ ցորեան, զգինի,*
*եւղ, զանդեայս արջառոց քոց, եւ զհօտս*
*ոչխարաց քոց, մինչեւ կորուսցէ զքեզ.*
52 *Եւ նեղեսցէ զքեզ յամենայն քաղաքս*
*քո, մինչեւ կործանեսցին պարիսպք քո*
*բարձրացեալք եւ ամուրք յորս դուն յու-*
*սացեալ իցես յամենայն երկրին քում.*
*եւ նեղեսցէ զքեզ յամենայն քաղաքս*
53 *քո զորս ետ քեզ Տէր Աստուած քո. Եւ*
*կերիցես զծնունդս որովայնի քո, զմիս*
*ուստերաց քոց եւ զդստերաց քոց զոր*
*ետ քեզ Տէր՝ յանձկութեան քում եւ ի*
*նեղութեան քում որով նեղեսցէ զքեզ*
54 *թշնամին քո։ Գիրգն որ ի քեզ եւ փա-*
*փուկն յոյժ չարակնեսցէ յեղբայր իւր եւ*
*ի կին ծոցոյ իւրոյ, եւ ի մնացեալ որ-*
55 *դիսն որ մնայցեն նմա, Տալ միում ի*
*նոցանէ ի մարմնոյ որդւոց իւրոց յորոց*
*ուտիցէ, վասն չմնալոյն նմա ինչ. յանձ-*
*կութեանն քում եւ ի նեղութեան որով*
*նեղիցեն զքեզ թշնամիքն քո յամենայն*
56 *քաղաքս քո։ Եւ [5]գիրգն որ ի քեզ եւ*
*փափուկն յոյժ, որոյ ոչ իցէ ոտին իւրոյ*
*առեալ զփորձ գնալոյ ի վերայ երկրի*
*վասն փափկութեան իւրոյ եւ գրգու-*
*թեան, չարակնեսցէ յայր ծոցոյ իւրոյ,*
57 *եւ [6]զուստրն իւր եւ զդուստր, Եւ զաղտն*
*ելեալ ի միջոյ իւրմէ, եւ զծնունդն զոր*
*ծնանիցի՝ խորովեսցէ ի նոցանէ եւ կե-*
*րիցէ. եւ վասն նուազութեանն՝ յամե-*
*նայնէ թաքուսցէ" յանձկութեանն եւ ի*
*նեղութեանն, որով նեղիցէ զքեզ թշնա-*
*մին յամենայն քաղաքս քո։*
58 *Եւ եթէ ոչ լուիցէք առնել զամենայն*
*բանս օրինացս այսոցիկ, զգրեալս ի*
*գիրս յայսմիկ, երկնչել ի պատուական*
*եւ սքանչելի անուանէ Տեառն Աստուծոյ*
59 *քո, Նորանշան արասցէ Տէր զհարուածս*
*քո եւ զհարուածս զաւակի քո, զհա-*
*րուածս մեծամեծս եւ զարմանալիս, եւ*
60 *զցաւս չարաչարս եւ զկարեւորս. Եւ*
*ածցէ ի վերայ քո զամենայն ախտս չա-*
*րաչարս զեգիպտացւոյն յորմէ սոսկա-*

[1]Եբր. զթագաւոր քո [2]Եբր. կթեսցես [3]Եբր. ամենայն անէծքս [4]Եբր. առատութեան ամենայնի

[5]Եբր. կին գիրգ [6]Եբր. յուստր իւր և ի դուստր իւր, (57) Եւ յաղտն ելեալ ի միջոյ իւրմէ, և յորդիս իւր զորս ծնանիցի, զի կերիցէ զնոսա վասն նուազութեանն յամենայնէ ի ծածուկ.

յիրն յերեսաց նոցա, եւ մնասցին ի քեզ։
61 Եւ զամենայն հիւանդութիւնս եւ զա-
մենայն հարուածս [1]զգրեալս ի գիրս օ-
րինացս այսոցիկ՝ ածցէ Տէր ի վերայ քո,
62 մինչեւ սատակեսցէ զքեզ։ Եւ մնասջիք
թուով սակաւք, փոխանակ զի էիք դուք
իբրեւ զաստեղս երկնից բազմութեամբ,
[2]եւ ոչ լուարուք ձայնի Տեառն Աստուա-
63 ծոյ ձերոյ։ Եւ եղիցի, որպէս ուրախ
եղեւ ի ձեզ Տէր բարի առնել ձեզ եւ
բազմացուցանել զձեզ, նոյնպէս ուրախ
լինիցի Տէր ի ձեզ սատակել զձեզ, եւ
բարձջիք յերկրէն յոր մտանելոց էք ժա-
64 ռանգել զնա։ Եւ ցրուեսցէ զքեզ Տէր
[3]Աստուած քո" ընդ ամենայն ազգս, ի
ծագաց երկրի մինչեւ ի ծագս երկրի, եւ
ծառայեսցես անդ աստուածոց օտարաց,
փայտից եւ քարանց, զորս ոչ գիտէիր
65 դու եւ հարք քո։ Այլ եւ յազգսն յայ-
նոսիկ ոչ հանգուսցէ զքեզ, եւ ոչ լի-
նիցի կայ թաթից ոտից քոց. եւ տացէ
քեզ անդ սիրտ տրտմեալ եւ աչս սորեալս
66 եւ անձն հաշեալ. Եւ եղիցին կեանք քո
կախեալ առաջի աչաց քոց, եւ զար-
հուրեսցիս զցայգ եւ զցերեկ, եւ ոչ հա-
67 ւատասցես կենացն քոց. Ընդ առաւօտ
ասիցես թէ Ե՞րբ լինիցի երեկոյ, եւ ընդ
երեկոյս ասիցես թէ Ե՞րբ լինիցի առա-
ւօտ, ի զարհուրանաց սրտի քո զոր
երկնչիցիս, եւ ի տեսլեանց աչաց քոց
68 զոր տեսանիցես։ Եւ դարձուսցէ զքեզ
Տէր անդրէն յԵգիպտոս նաւօք [3]հազա-
րաւոր զօրօք. եւ" ընդ ճանապարհ [4]ընդ
նոյն՝ ոչ յաւելցուք" տեսանել զնա. եւ
վաճառեսջիք անդ թշնամեաց ձերոց ի
ծառայս եւ յաղախնայս, եւ ոչ ոք իցէ
որ գնիցէ։

## Գլ. ԻԹ

1 Այս բանք են ուխտին զոր պատուիրեաց
Տէր Մովսիսի, հաստատել որդւոյն Իս-
րայելի յերկրին Մովաբու, թող զայն
ուխտ զոր ուխտեաց նոցա ի Քորեբ։
2 Եւ կոչեաց Մովսէս զամենայն որդիսն
Իսրայելի եւ ասէ ցնոսա, Դուք ձեզէն
տեսէք զամենայն ինչ զոր արար Տէր
յԵգիպտոս առաջի ձեր, ընդ Փարաւոն
եւ ընդ ծառայս նորա, եւ ընդ ամենայն
3 երկիր նորա. Զփորձանսն մեծամեծս զոր
տեսին աչք ձեր, զնշանսն եւ զարուեստս
մեծամեծս զայնոսիկ, [3]զձեռն հզօր եւ
4 զբազուկ բարձր։" Եւ ոչ ետ ձեզ Տէր
[3]Աստուած ձեր" սիրտ գիտելոյ եւ աչս
տեսանելոյ եւ ականջս լսելոյ մինչեւ
5 ցայսօր։ Եւ [5]ած զձեզ զքառասուն ամ
ընդ անապատն. ոչ հնացան հանդերձք ձեր
եւ ոչ մաշեցան կօշիկք յոտից ձերոց.
6 Հաց ոչ կերայք եւ գինի եւ ցքի ոչ ար-
բէք, զի ծանիջիք թէ ես եմ Տէր Աս-
7 տուած ձեր։ Եւ եկիք մինչեւ ի տեղիս
յայս, եւ ել Սեհոն թագաւոր Եսեբո-
նայ, եւ Ովգ թագաւոր Բասանու ընդ-
8 դէմ մեր պատերազմաւ. Եւ հարաք զնո-
սա եւ առաք զերկիր նոցա, եւ [6]ետու
զնա ի ժառանգութիւն Ռուբինի եւ Գա-
9 դայ եւ կիսոյ ցեղին Մանասէի։ Եւ զգու-
շասջիք առնել զամենայն բանս ուխտիս
այսորիկ, զի [7]իմանայցէք զամենայն"
զոր առնիցէք։
10 Դուք կայք աւադիկ այսօր ամենեքեան
առաջի Տեառն Աստուծոյ ձերոյ, ցեղա-
պետք ձեր եւ ծերակոյտ ձեր եւ դատա-
ւորք ձեր եւ ատենադպիրք ձեր, եւ ա-
11 մենայն այր Իսրայելի, Եւ կանայք ձեր
եւ որդիք ձեր, եւ եկն որ ի միջի բա-
նակին ձերում, ի փայտահատէ ձերմէ
12 մինչեւ ցջրհեր ձեր. Յանցանել քո զուխ-
տիւ Տեառն Աստուծոյ քո, եւ [8]զնզո-
վիւք նորա զոր Տէր Աստուած քո ուխ-
13 տէ քեզ այսօր, Զի կացուսցէ զքեզ[9] իւր
ժողովուրդ, եւ նա եղիցի քեզ Աստուած
որպէս եւ ասաց[10], եւ զոր օրինակ եր-
դուաւ հարցն քոց Աբրահամու եւ Իսա-
14 հակայ եւ Յակոբայ։ Եւ ոչ ձեզ միայն
ուխտեմ ես զուխտս զայս եւ [11]զնզովս
15 զայսոսիկ", Այլ եւ որոց աստ ընդ մեզ
իցեն այսօր առաջի Տեառն Աստուծոյ մե-
16 րոյ, եւ որոց չիցեն ընդ մեզ այսօր. Զի
դուք ինքնին գիտէք, որպէս բնակեցաք
յերկրին Եգիպտացւոց, եւ որպէս ան-
ցաք ընդ մէջ ազգացն ընդ որս անցէք
17 դուք. Եւ տեսէք զգարշելիս նոցա եւ
զկուռս իւրեանց, զփայտն եւ զքար,
18 զարծաթն եւ զոսկի որ է առ նոսա։ Մի՛
ոք իցէ ի ձէնջ այր կամ կին, կամ ազգ
կամ ցեղ որոյ միտք իւր խոտորեալ [12]ի-
ցեն ի Տեառնէ Աստուծոյ մերմէ, երթալ

[1]Եբր. որ չիցեն գրեալ [2]Եբր. քանզի [3]Եբր. [illegible] [4]Եբր. զորմէ ասացի քեզ՝ Ոչ յաւելուցուս

[5]Եբր. ածի [6]Եբր. տուաք [7]Կամ. յաջողեսջիք յամենայնի [8]Եբր. զերդմամբ [9]Եբր.-յեցէն յաւելու. այսօր [10]Եբր.-յեցէն յաւելու. քեզ [11]Եբր. զերդումնս զայս [12]Եբր. իցեն այսօր

*պաշտել զդիս ազգացն այնոցիկ, [1]մի՛*
*ոք իցէ ի ձէնջ" արմատ ի վեր բուսեալ*
19 *զառնութեան եւ զդառնութեան. Եւ ե-*
*ղիցի եթէ լուիցէ զպատգամս նզովիցս*
*այսոցիկ, եւ [2]խոկասցի ի սրտի իւրում*
*եւ ասիցէ, [3]Քաւութիւնք եղիցին" ինձ,*
*եթէ ես ըստ մոլորութեան սրտի իմոյ*
*գնայցեմ. [4]զի մի՛ կորուսանիցէ մեղա-*
20 *ւորն զանմեղն". Եւ ոչ հաճեսցի [5]Աս-*
*տուած ներել նմա. այլ յայնժամ բոր-*
*բոքեսցի բարկութիւն նորա եւ նախանձ*
*նորա ի մարդն յայն, եւ հասցեն նմա ա-*
*մենայն նզովք ուխտիս այսորիկ՝ գրեալք*
*ի գրի օրինացս այսոցիկ, եւ ջնջեսցէ Տէր*
21 *զանուն նորա ի ներքոյ երկնից. Եւ զա-*
*տուսցէ զնա Տէր ի չարիս յամենայն որդ-*
*ւոցն Իսրայելի, ըստ ամենայն նզովից*
*ուխտիս գրելոյ ի գիրս օրինացս այսո-*
22 *ցիկ. Եւ ասիցեն ազգքն [6]միւս եւ" որ-*
*դիքն ձեր որ յարիցեն յետ ձեր, եւ օ-*
*տարոտին որ գայցէ յերկրէ հեռաստա-*
*նէ, տեսանիցեն զհարուածս երկրին այ-*
*նորիկ եւ զախտս նորա զոր առաքեաց*
23 *Տէր ի վերայ նորա, Ծծումբն եւ զաղն*
*այրեցեալ. յամենայն ի հող նորա մի՛*
*սերմանեսցի եւ մի՛ բուսցի, եւ մի՛ ելցէ*
*ի վերայ նորա ամենայն պէտ դալար,*
*որպէս կործանեցան Սոդոմ եւ Գոմոր,*
*Ադամա եւ Սեբոյիմ, զորս կործանեաց*
*Տէր սրտմտութեամբ եւ բարկութեամբ։*
24 *Եւ ասասցեն ամենայն ազգքն, Ընդէ՞ր*
*արար Տէր այնպէս երկրին այնմիկ, զի՞նչ*
*իցէ սրտմտութիւն մեծ բարկութեանն*
25 *այնորիկ։ Պատասխանի տացեն եւ ա-*
*սասցեն, Զի թողին զուխտն [7]Աստուծոյ*
*հարց իւրեանց, զոր ուխտեաց հարցն նո-*
*ցա յորժամ եհան զնոսա յերկրէն Եգիպ-*
26 *տացւոց, Եւ գնացեալ պաշտեցին զաս-*
*տուածս օտարս, եւ երկիր պագին նոցա*
*զոր ոչն ճանաչէին, եւ ոչ [8]բաժանեաց*
27 *նոցա։ Եւ բարկացաւ Տէր սրտմտութեամբ*
*ի վերայ երկրին այնորիկ, ածել ի վերայ*
*նորա ըստ ամենայն նզովից ուխտիս գրե-*
28 *լոյ [9]ի մատենի օրինացս այսոցիկ". Եւ ե-*
*բարձ զնոսա Տէր յերկրէ իւրեանց բար-*
*կութեամբ եւ սրտմտութեամբ եւ զայ-*
*րացմամբ մեծաւ յոյժ, եւ մերժեաց զնոսա*

[1] Եբր. մի՛ լիցի ի ձեզ [2] Եբր. օրհնեսցէ զանձն [3] Եբր. Խաղաղութիւն եղիցի [4] Եբր. առ յաւելուլ զարբեցութիւն ի ծարաւ [5] Եբր. Տէր [6] Եբր. որ առ յապայ, [7] Եբր. Տեառն Աստուծոյ [8] Եբր. էին բաժին [9] Եբր. ի մատենիս յայսմիկ

29 *յերկիր օտար մինչեւ ցայժմ։ Ծածուկքն*
*Տեառն Աստուծոյ մերում, եւ յայտնիքն*
*մեզ եւ որդւոց մերոց յաւիտեան, առնել*
*զամենայն պատգամս օրինացս այսոցիկ։*

## ԳԼ. Լ

1 *Եւ եղիցի եթէ հասանիցեն ի վերայ քո*
*ամենայն պատգամքս այսոքիկ, կամ օրհ-*
*նութիւնք կամ անէծք զորս ետու ա-*
*ռաջի երեսաց քոց, եւ կալցիս ի սրտի*
*քում ընդ ամենայն ազգսն ուր ցրուես-*
2 *ցէ զքեզ Տէր անդ, Եւ դարձցիս առ Տէր*
*Աստուած քո, եւ լուիցես ձայնի նորա*
*ըստ ամենայնի զոր ես պատուիրեմ քեզ*
*այսօր, [10]յամենայն սրտէ քումմէ եւ*
3 *յամենայն անձնէ քումմէ, Եւ [11]բժշկես-*
*ցէ Տէր զմեղսն" քո եւ ողորմեսցի քեզ,*
*եւ դարձեալ ժողովեսցէ զքեզ յամենայն*
*ազգաց ուր ցրուեաց զքեզ [12]Տէր անդր։*
4 *Եթէ իցէ ցրումն քո [13]ի ծագաց երկրի*
*մինչեւ ի ծագս երկրի", անտի ժողո-*
*վեսցէ զքեզ Տէր Աստուած քո, եւ ան-*
5 *տի առցէ զքեզ [14]Տէր Աստուած քո". Եւ*
*ածցէ զքեզ Տէր Աստուած քո յերկիրն*
*զոր ժառանգեցին հարք քո, եւ ժառան-*
*գեսցես զնա եւ բարի եղիցի քեզ, եւ*
*բազմապատիկ արասցէ զքեզ քան զհարս*
6 *քո. Եւ [15]պարուրեսցէ Տէր զսիրտ քո եւ*
*զսիրտ զաւակի քո, սիրել զՏէր Աս-*
*տուած քո յամենայն սրտէ քումմէ եւ*
*յամենայն անձնէ քումմէ, զի կեցցես*
7 *[14]դու եւ զաւակ քո"։ Եւ տացէ Տէր Աս-*
*տուած քո զնզովս զայս ի թշնամիս քո*
*եւ յատելիս քո որք հալածեցինն զքեզ։*
8 *Եւ դու դարձցիս եւ լուիցես ձայնի*
*Տեառն [14]Աստուծոյ քո", եւ արասցես*
*զպատուիրանս նորա զոր ես պատուի-*
9 *րեմ քեզ այսօր։ Եւ աճեցուսցէ զքեզ*
*Տէր Աստուած քո յամենայն գործս ձե-*
*ռաց քոց, ծննդովք որովայնի քո, եւ*
*արդեամբք երկրի քո, եւ ծննդովք ա-*
*նասնոց քոց. զի դարձցի ի քեզ Տէր*
*[14]Աստուած քո" ուրախ լինել քեւ ի բա-*
*րութիւնս որպէս ուրախ եղեւ հարքն*
10 *քովք, Եթէ լուիցես ձայնի Տեառն Աս-*
*տուծոյ քո, պահել եւ առնել զամենայն*
*պատուիրանս նորա եւ զիրաւունս նո-*
*րա եւ զդատաստանս նորա զգրեալս ի*

[10] Եբր. դու եւ որդիք քո յամենայն [11] Եբր. դարձուսցէ Տէր Աստուած քո զգերութիւն [12] Եբր. Տէր Աստուած քո [13] Եբր. մինչեւ ի ծագս երկնից [14] Յեբր. պակաս [15] Կամ, Թլփատեսցէ

գրի օրինացս այսոցիկ, եթէ դարձցիս
առ Տէր Աստուած քո յամենայն սրտէ
քումմէ եւ յամենայն անձնէ քումմէ։
11 Զի պատուիրանքս այս զոր ես պա-
տուիրեմ քեզ այսօր, ոչ [1]ծանրացեալ
12 ինչ է եւ ոչ հեռի ի քէն։ Ոչ յերկինս
թէ ասիցես, Ո՞վ ելանիցէ մեզ յերկինս
եւ առնուցու զնա, եւ լուիցուք եւ ա-
13 րասցուք. Եւ ոչ յայնկոյս ծովու է, թէ
ասիցես, Ո՞վ անցանիցէ յայնկոյս ծովու
եւ առնուցու մեզ զնա, եւ լսելի արաս-
14 ցէ մեզ եւ արասցուք. Մերձ է բանն առ
քեզ յոյժ, ի բերան քո եւ ի սրտի քում,
[2]եւ ի ձեռս քո է" առնել զնա։
15 Ահաւասիկ ետու այսօր առաջի երե-
սաց քոց [3]զկեանս եւ զմահ, զբարի եւ
16 զչար. Եւ եթէ լուիցես պատուիրանաց
Տեառն Աստուծոյ քո՝ զոր" ես պատուի-
րեմ քեզ այսօր սիրել զՏէր Աստուած
քո, գնալ ի ճանապարհս նորա, պահել
զիրաւունս եւ զպատուիրանս նորա եւ
զդատաստանս նորա, [4]կեցցէք եւ բա-
զումք լինիցիք". եւ օրհնեսցէ զքեզ Տէր
Աստուած քո յամենայն երկրին յոր մտա-
17 նելոց ես ժառանգել զնա։ Եւ եթէ փո-
խեսցի սիրտ քո եւ ոչ լուիցես, եւ մո-
լորեալ երկիր պագանիցես աստուածոց
18 օտարաց եւ պաշտեսցես զնոսա, Պատ-
մեմ [5]քեզ այսօր զի կորստեամբ կորնչի-
ջիք, եւ ոչ լինիցիք բազմօրեայք ի վե-
րայ երկրին յոր դուք անցանէք ընդ
19 Յորդանան ժառանգել զնա։ Ունիմ ձեզ
վկայ այսօր զերկինս եւ զերկիր. զկեանս
եւ զմահ ետու առաջի երեսաց ձերոց,
զօրհնութիւնս եւ զանէծս. եւ ընտրեա
զկեանս, զի կեցցես դու եւ զաւակ քո.
20 Սիրել զՏէր Աստուած քո եւ լսել ձայ-
նի նորա եւ ունել զնմանէ, զի այն են
կեանք քո եւ երկայնութիւն աւուրց
քոց, բնակել յերկրին զոր երդուաւ Տէր
հարցն քոց Աբրահամու եւ Իսահակայ
եւ Յակոբայ՝ տալ նոցա։

## ԳԼ. ԼԱ.

1 Եւ [6]կատարեաց Մովսէս խօսել զամե-
նայն" զբանս զայսոսիկ առ ամենայն որ-
2 դիսն Իսրայելի, Եւ ասէ ցնոսա, Հա-
րեւր եւ քսան ամաց եմ ես այսօր, եւ
ոչ եւս կարեմ ելանել եւ մտանել. [7]քան-
զի Տէր ասաց ցիս թէ ոչ անցանիցես
3 ընդ այդ Յորդանան. Տէր Աստուած քո
երթայ առաջի երեսաց քոց, Նա սա-
տակեսցէ զազգսն զայնոսիկ յերեսաց
քոց, եւ ժառանգեսցես զնոսա. եւ Յե-
սու երթայ առաջի երեսաց քոց որպէս
4 խօսեցաւ Տէր։ Եւ արասցէ Տէր ընդ նո-
սա որպէս արար ընդ Սեհոն եւ ընդ Ովգ,
ընդ [2]երկուսին թագաւորսն Ամովրհաց-
ւոց [2]որ էին յայնկոյս Յորդանանու", եւ
ընդ երկիր նոցա, որպէս [8]սատակեցաք
5 զնոսա. Եւ մատնեսցէ զնոսա Տէր ա-
ռաջի ձեր, եւ արասջիք ընդ նոսա որպէս
6 պատուիրեցի ձեզ։ Քաջ լեր եւ զօրա-
ցիր, մի երկնչիր, եւ մի զանգիտեր, եւ
մի զարհուրեսցիս յերեսաց նոցա. զի Տէր
Աստուած քո ինքնին է որ երթայցէ յա-
ռաջագոյն ընդ ձեզ ի միջի ձերում. ոչ
թողցէ զքեզ եւ ոչ ընդ վայր հարկանիցէ։
7 Եւ կոչեաց Մովսէս զՅեսու եւ ասէ
ցնա առաջի ամենայն Իսրայելի, Քաջ
լեր եւ զօրացիր. քանզի դու մտանելոց
ես առաջի երեսաց ժողովրդեանդ այ-
դորիկ յերկիրն զոր երդուաւ Տէր հարցն
[9]ձերոց տալ նոցա, եւ դու ժառանգեցու-
8 ցես զնոսա։ Եւ Տէր որ երթալոց է [10]ընդ
քեզ, ոչ թողցէ զքեզ եւ ոչ ընդ վայր
հարցէ. մի երկնչիր եւ մի զանգիտեր։
9 Եւ գրեաց Մովսէս [11]զամենայն բանս
օրինացս այսոցիկ ի մատենի", եւ ետ
զայն քահանայից, որդւոցն Ղեւեայ, որ
բառնային զտապանակ ուխտին Տեառն,
10 եւ [12]ծերոց որդւոցն" Իսրայելի, Եւ պա-
տուիրեաց նոցա Մովսէս [2]յաւուր յայն-
միկ" եւ ասէ, Յետ եւթն ամի ժամանա-
կի տարւոյն թողութեան ի տօնի տաղա-
11 ւարահարացն, Ի գումարել ամենայն Իս-
րայելի յանդիման լինելոյ առաջի Տեառն
Աստուծոյ քո ի տեղւոջն զոր ընտրեսցէ
Տէր, ընթեռնուցուք զօրէնս զայս ա-
12 ռաջի [13]Իսրայելի յականջս նոցա, Եկե-
ղեցացուցեալ զժողովուրդն, զարս եւ
զկանայս եւ զմանկունս, եւ զեկն որ ի
քաղաքս ձեր. զի լուիցեն եւ ուսանի-
ցին երկնչել ի Տեառնէ Աստուծոյ [14]մեր-
մէ, եւ ուսցին առնել" զամենայն պատ-

[1]Կամ, անհաս [2]Յեբր. պակասէ [3]Եբր. զկեանս եւ զբարի, եւ զմահ եւ զչար. (16) Զի [4]Եբր. եւ կեցցես եւ բազում լինիցիս [5]Եբր. ձեզ [6]Եբր. չոգաւ Մովսէս եւ խօսեցաւ

[7]Եբր. եւ [8]Եբր. սատակեաց [9]Եբր. նոցա [10]Եբր. առաջի քո. Նա եղիցի ընդ [11]Եբր. զօրէնս զայս [12]Եբր. զամենայն ծերս [13]Եբր. ամենայն Իսրայելի [14]Եբր. ձերմէ պաշտել եւ առնել

13 զամս օրինացս այսոցիկ, Եւ որդիք նո-
ցա որ ոչ գիտիցեն՝ լուիցեն եւ ուսցին
երկնչել ի Տեառնէ Աստուծոյ [1]մերմէ զա-
մենայն աւուրս որչափ եւ կեցցեն նո-
քա" ի վերայ երկրին յոր դուք անցանե-
լոց էք ընդ Յորդանան ժառանգել զնա։
14 Եւ ասէ Տէր ցՄովսէս, Ահա մերձե-
ցան աւուրք մահուան քո. կոչեա զՅե-
սու, եւ կացէք [2]առաջի դրան խորանին
վկայութեան", եւ հրաման տաց նմա։
Եւ գնացին Մովսէս եւ Յեսու [3]ի խորանն
վկայութեան", եւ կացին [2]առ դրան
15 խորանին վկայութեան"։ Եւ [4]էջ Տէր"
սեամբ ամպոյ [3]եւ եկաց առ դրան խո-
րանին վկայութեան", եւ եկաց սիւն
16 ամպոյն առ դրան խորանին։ Եւ ասէ
Տէր ցՄովսէս, Ահաւասիկ դու ննջես-
ցես ընդ հարս քո, եւ յարուցեալ ժողո-
վուրդդ այդ պոռնկեսցի զհետ աստուա-
ծոց օտարաց երկրին յոր մտանիցէ պա
ի նոսա, եւ թողուցուն զիս եւ ցրիցեն
17 զուխտն իմ զոր ուխտեցի ընդ դոսա։ Եւ
բարկացայց դոցա սրտմտութեամբ յա-
ւուր յայնմիկ, եւ լքից զդոսա, եւ դար-
ձուցից զերեսս իմ ի դոցանէ, եւ եղի-
ցին կերակուր [3]թշնամեաց. եւ գտցեն
զդոսա չարիք բազումք եւ նեղութիւնք,
եւ ասասցեն յաւուր յայնմիկ, Քանզի
չէ Տէր Աստուած մեր ընդ մեզ, գտին
18 զմեզ չարիքս այսոքիկ։ Եւ ես դարձու-
ցանելով դարձուցից զերեսս իմ ի նո-
ցանէ յաւուր յայնմիկ վասն ամենայն
չարեացն զոր արարին, զի դարձան յաս-
19 տուածս օտարս։ Եւ արդ գրեցէք
զբանս օրհնութեանս այսորիկ, եւ ու-
սուսջիք զդա որդւոցն Իսրայելի, եւ
արկջիք զդա ի բերան նոցա, զի եղիցի
ինձ օրհնութիւնդ այդ ի վկայութիւն ի
20 մէջ որդւոցդ Իսրայելի։ Քանզի տա-
րայց զդոսա յերկիրն [3]բարի զոր երդուայ
հարց նոցա. երկիր՝ որ բղխէ զկաթն եւ
զմեղր, եւ կերիցեն եւ լցեալ յագեսցին.
եւ դարձցին յաստուածս օտարս
եւ պաշտեսցեն զնոսա, եւ զայրացուցա-
նիցեն զիս, եւ ցրիցեն զուխտն իմ զոր
21 ուխտեցի նոցա։ [5]Եւ ընդդէմ" կացցէ
նոցա օրհնութիւնդ այդ յանդիման լինել
վկայ. եւ մի՛ մոռասցի [3]ի բերանոց նո-
ցա եւ" ի բերանոյ զաւակի նոցա. քան-
զի գիտեմ [6]զչարութիւն նոցա զոր ա-
րարին աստ" այսօր յառաջ քան զտանելն
իմ զնոսա յերկիրն [3]բարութեան զոր եր-
22 դուայ [3]հարցն նոցա"։ Եւ գրեաց Մով-
սէս զօրհնութիւնս զայս յաւուր յայն-
միկ, եւ ուսոյց զսա որդւոցն Իսրայելի։
23 Եւ պատուիրեաց [3]Մովսէս Յեսուայ
որդւոյ Նաւեայ եւ ասէ, Քաջ լեր եւ
զօրացիր. զի դու տանելոց ես զորդիսն
Իսրայելի յերկիրն զոր [7]խոստացաւ տալ
նոցա Տէր, եւ նա եղիցի" ընդ քեզ։
24 Եւ իբրեւ կատարեաց Մովսէս գրել զա-
մենայն զբանս օրինացս այսոցիկ ի մա-
25 տեան մինչեւ ի սպառ, Եւ պատուիրեաց
Ղեւտացւոցն որ կրէին զտապանակ ուխ-
26 տին Տեառն, ասէ, Առեալ զմատեան օ-
րինացդ այդոցիկ դնիցէք ի կողմանէ տա-
պանակի ուխտին Տեառն Աստուծոյ ձե-
րոյ, եւ եղիցի անդ ընդ քեզ ի վկայու-
27 թիւն. Զի ես գիտեմ զհեստութիւն քո
եւ զխստ պարանոց քո. զի մինչդեռ
ես ընդ ձեզ կենդանի եմ այսօր, դառ-
նացուցիչք էք [8]Աստուածակողմանն, ո՞ր-
պէս ոչ ապաքէն եւ յետ մահուան ի-
28 մոյ։ Արդ ժողովեցէք առ իս [9]զցեղա-
պետս եւ զծերս ձեր եւ զդատաւորս
ձեր" եւ զատենադպիրս ձեր, [10]զի խօ-
սեցայց յականջս նոցա [3]զամենայն զբանս
զայսոսիկ, եւ կալայց [11]ձեզ վկայ զեր-
29 կինս եւ զերկիր. Քանզի գիտեմ եթէ
յետ վախճանի իմոյ անօրինելով անօրի-
նիցէք, եւ խոտորիցիք ի ճանապարհէն
զոր պատուիրեցի ձեզ, եւ պատահիցեն
ձեզ չարիքն ի վախճանի աւուրց. քան-
զի առնիցէք չար առաջի Տեառն՝ բար-
կացուցանել զնա գործովք ձեռաց ձե-
30 րոց։ Եւ խօսեցաւ Մովսէս յականջս ա-
մենայն եկեղեցւոյն Իսրայելի զբանս օրհ-
նութեանս այսորիկ մինչեւ ի սպառ։

## ԳԼ. ԼԲ

1 [12]Նայեցարուք, երկինք, եւ խօսեցայց,
եւ լուիցէ երկիր զպատգամս բերանոյ ի-
2 մոյ։ [13]Ակնկալեսցի իբրեւ զանձրեւ բար-

[1]Եբր. ձերմէ զամենայն աւուրս զորս կենդանի իցէք [2]Եբր. ի խորանին ժողովոյ [3]Յեբր. պակաս [4]Եբր. երեւեցաւ Տէր ի խորանին [5]Եբր. Եւ եղիցի յորժամ գտցեն զնոսա չարիք բազումք եւ նեղութիւնք, եւ ընդդէմ

[6]Եբր. զխորհուրդ նոցա զոր առնեն [7]Եբր. երդուայ տալ նոցա, եւ ես եղէց [8]Եբր. Տեառնակողմանն [9]Եբր. զամենայն ծերս ցեղից ձերոց [10]Եբր. եւ [11]Եբր. նոցա [12]Եբր. Ունկն դիք [13]Եբր. Կաթեսցէ

բառ իմ, եւ իջցեն իբրեւ ցօղ պատ-
գամք իմ, իբրեւ զանձրեւ ի վերայ սի-
զոյ եւ իբրեւ զտեղատարափ ի վերայ
3 խոտոյ. Զի զանուն Տեառն կարդացի.
տուք օրհնութիւն [1]Տեառն Աստուծոյ
4 մերոյ։ [2]Աստուած՝ որոյ ճշմարիտ են
գործք նորա, եւ ամենայն ճանապարհք
նորա իրաւամբք, Աստուած հաւատա-
րիմ է եւ ոչ գոյ ի նմա անիրաւութիւն,
5 արդար եւ անարատ է Տէր։ [3]Մեղան եւ
ոչ նմա որդիք արատոյ˝, ազգ թիւր եւ
6 խոտորեալ։ Զա՞յդ Տեառն հատուցանէք
այդպէս, ժողովուրդ յիմար եւ ոչ իմաս-
տուն. ո՞չ նա է Հայրն որ ստացաւ զքեզ,
7 արար զքեզ եւ հաստատեաց զքեզ։ Յուշ
լիցին քեզ աւուրքն յաւիտենից, իմա-
ցարուք զամս ազգաց յազգս. հարց
ցհարսն քո եւ պատմեսցեն քեզ. եւ
8 ցծերս քո, եւ ասասցեն քեզ. [4]Յորժամ
բաժանեաց Բարձրեալն զազգս ամենայն,
որպէս սփռեաց˝ զորդիսն Ադամայ, կա-
ցոյց սահմանս ազգաց ըստ թուոյ որդ-
9 ւոց [5]Աստուծոյ, Եղեւ բաժին Տեառն
ժողովուրդ իւր, Յակոբ վիճակ ժառան-
10 գութեան իւրոյ [1]Իսրայէլ։ Բաւական ե-
ղեւ նմա յանապատի, ի ծարաւ սօթոյ
յանջրդի պաշտպանեաց զնա եւ խրա-
տեաց եւ պահեաց զնա իբրեւ զբիբ ա-
11 կան։ [6]Իբրեւ զարծուի ի ծածկել զբոյն
իւր, եւ ի ձագս իւր գթացաւ˝. տարա-
ծեաց զթեւս իւր եւ ընկալաւ զնա եւ
բարձեալ բերէր զնա ի վերայ միջնո-
12 ղանց իւրոց. Տէր միայն ածէր [7]զնոսա,
եւ ոչ գոյր ընդ [8]նոսա աստուած օտար։
13 [9]Եհան զնոսա ի զօրութիւն˝ երկրի, կե-
րակրեաց զնոսա արդեամբք անդաստա-
նաց. զիեցոյց մեղր ի վիմէ եւ եւղ յա-
14 պառաժ վիմէ. Կոգի կովուց եւ կաթն
մաքեաց, հանդերձ ճարպով գառանց եւ
խոյոց, որդւոց ցլուց եւ նոխազաց՝ ընդ
ճարպոյ երիկամանց ցորենոյ. եւ զարիւն
15 խաղողոյ ըմպէին գինի։ [1]Եկեր Յակոբ
եւ յագեցաւ,˝ յօրացաւ եւ անկուշեաց
սիրելին. գիրացաւ, ստուարացաւ եւ
լայնացաւ, եւ եթող զՏէր Աստուած
զԱրարիչ իւր, եւ [10]ապստամբեաց յԱս-
16 տուծոյ փրկչէ իւրմէ˝։ Բարկացուցին
[7]զիս օտարոտովք, եւ դարշելեօք իւր-
17 եանց դառնացուցին [7]զիս։ Զոհեցին դի-
ւաց եւ ոչ Աստուծոյ, դից՝ զորս ոչ
գիտէին. նորք եւ աժամայնք եկեալ,
18 [11]զորս ոչ գիտէին˝ հարք ձեր։ Թողեր
[12]զԱստուած որ ծնաւ զքեզ, մոռացար
19 զԱստուած [13]զկերակրիչն քո։ Եւ ետես Տէր
եւ [14]նախանձեցաւ, եւ սրամտեցաւ վասն
բարկութեան˝ ուստերաց եւ դստերաց
20 իւրոց. Եւ ասաց, Դարձուցից զերեսս
իմ՛ ի նոցանէ, եւ [15]ցուցից նոցա˝ զինչ
լինելոց իցէ [16]ի վախճանի աւուրց˝. զի
ազգ թիւր են, որդիք՝ յորս ոչ գոն հա-
21 ւատք. Նոքա նախանձեցուցին զիս չաս-
տուածովք, եւ բարկացուցին զիս կռովք
իւրեանց. եւ ես նախանձեցուցից զնո-
սա չազգաւ, եւ անմիտ ժողովրդեամբ
22 բարկացուցից զնոսա։ Զի հուր բորբո-
քեալ է ի բարկութենէ իմմէ, այրեսցէ
մինչեւ ի դժոխս ներքինս. կերիցէ զեր-
կիր եւ զարմտիս նորա, բորբոքեսցէ
23 զհիմունս լերանց։ Կուտեցից ի նոսա չա-
րիս, եւ զնետս իմ սպառեցից ի նոսա։
24 Մաշեալք սովով եւ [17]կերակրով թռչնոց.
լարս առանց բժշկութեան˝ եւ ժանիս
գազանաց առաքեցից ի նոսա, [18]սրմտու-
25 թեամբ քարշել զնոսա ընդ երկիր˝։ Ար-
տաքուստ անզաւակեսցէ զնոսա սուր, եւ
ի շտեմարանաց երկեւղ. զերիտասարդն
հանդերձ կուսիւն, եւ զստնդիացն հան-
26 դերձ հաստատելով ծերով։ Ասացի բամ՝
Ցրեցից զնոսա, դադարեցուցից ի մարդ-
27 կանէ զյիշատակս նոցա. Թէ [19]ոչ վասն
բարկութեան թշնամեաց. զի մի՛ [1]եր-
կայնակեացք լինիցին, եւ զի մի՛˝ բարձ-
րասցին հակառակորդքն եւ ասիցեն, թէ
Ձեռն մեր բարձր եւ ոչ Տէր արար զայս
28 ամենայն։ Զի ազգ խորհրդակորոյս են,
29 եւ ոչ գոյ ի նոսա իմաստութիւն. [20]Եւ
ոչ խորհեցան ի միտ առնուլ զայս. արդ
30 ընկալցին առ յապա ժամանակս˝։ Զիա՞րդ
հալածեսցէ մի զհազարս, եւ երկուք

[1] Եբր. դոխոռէ [2]Եբր. Վէմն [3]Եբր. Ապականեցան յանձինս, չեն որդիք նորա, արատ նոցա [4]Եբր. Ի ժառանգեցուցանել Բարձրելոյն զազգս, ի բաժանել [5]Եբր. Իսրայելի [6]Եբր. Որպէս արծուի գրգռէ զբոյն իւր, գրգի ի վերայ ձագուց իւրոց [7]Եբր. զնա [8]Եբր. Նմա [9]Եբր. Հեծոյց զնա ի վերայ բարձանց

[10]Եբր. արհամարհեաց զՎէմն փրկութեան իւրոյ [11]Եբր. յորոց ոչ երկնչէին [12]Եբր. զՎէմն [13]Եբր. զստեղծիչն [14]Եբր. գարշեցաւ, ի զայրացուցանել [15]Եբր. տեսից [16]Եբր. վախճան նոցա [17]Եբր. սպառեալք տապով և դառն սատկնապաւ [18]Եբր. հանդերձ թունովք զեռնոց երկրի [19]Եբր. ոչ երկնչէի [20]Եբր. Իցէ՛ լինէին իմաստունք, ի միտ առնուին զայս եւ իմանային զվախճան իւրեանց

չարժեսցին զբեւրս , եթէ ոչ [1]Աստուած
31 վաճառեաց զնոսա ։ Զի ոչ են իբրեւ զԱս-
տուած մեր աստուածք՛՛ նոցա , եւ թշնա-
32 միք մեր [2]վատախորհուրդք ։ Զի յորթոյ
Սոդոմայ է որթ նոցա , եւ ուռ նոցա ի
Գոմորայ . խաղող նոցա՝ խաղող լեղի , եւ
33 ողկոյզ նոցա՝ դառնութիւն . [3]Սրտմտու-
թիւն վիշապաց գինի նոցա , եւ [3]սրտմտու-
34 թիւն իժից առանց բժշկութեան ։ Ո՞չ
ապաքէն այս ամենայն ժողովեալ է առ
իս , եւ կնքեալ կայ ի գանձի իմում ։
35 [4]Յաւուր վրէժխնդրութեան հատուցից՛՛,
ի ժամանակի յորում սխալեսցէ ոտն նո-
ցա . զի մերձ է օր կորստեան նոցա ,
եւ հասեալ պատրաստեալ կայ [5]ձեզ ։
36 Զի դատեսցէ Տէր զժողովուրդ իւր , եւ
ի ծառայս իւր [6]մխիթարեսցի . զի եստես
զնոսա լուծեալս եւ յքեալս եւ մաշեալս
37 ի գերութիւն ։ Եւ ասաց Տէր , Ո՞ւր են
աստուածք նոցա՝ [7]յորս յուսացեալ էին
38 ի նոսա՛՛, Զորոց զճարպ զոհից նոցա [8]ու-
տէիք եւ ըմպէիք՛՛ զգինի նուիրաց նո-
ցա . յարիցեն օգնեսցեն ձեզ եւ եղիցին
39 ձեր թիկունք ։ Տեսէք, [9]տեսէք զի ես եմ ,
եւ չիք այլ ոք՛՛ բաց յինէն . ես սպա-
նանեմ եւ ես կեցուցանեմ , հարկանեմ
եւ բժշկեմ , եւ ոչ ոք իցէ որ հանիցէ ի
40 ձեռաց իմոց ։ Զի ամբարձից յերկինս
զձեռս իմ , [10]եւ երդուայց յաջ իմ ,՛՛ եւ
ասացից , Կենդանի եմ ես յաւիտեանս .
41 [11]Զի սրեցից իբրեւ զփայլակն զսու-
սեր իմ , եւ կալցի զդատաստանաց ձեռն
իմ , հատուցից վրէժս թշնամեաց իմոց ,
42 եւ ատելեաց իմոց հատուցից ։ Արբե-
ցուցից զնետս իմ յարենէ , եւ սուր իմ
կերիցէ միս յարենէ վիրաւորաց եւ գե-
րութեան , ի գլխոց իշխանաց թշնա-
մեաց ։ [10]Ուրախ լերուք , երկինք , հան-
դերձ նովաւ , եւ երկիր պագցեն նմա
43 ամենայն որդիք Աստուծոյ ։՛՛ Ուրախ լե-
րուք , ազգք , ընդ ժողովրդեան նորա ,
[12]եւ զօրացուսցեն զնա ամենայն հրեշ-
տակք Աստուծոյ , զի խնդրի վրէժ ար-
եան որդւոց նորա . եւ խնդրեսցէ վրէժ
եւ հատուսցէ զատաստանս թշնամեաց՛՛,
եւ [13]ատելեացն հատուսցէ եւ սրբեսցէ
Տէր զերկիր ժողովրդեան իւրոյ։
Եւ գրեաց Մովսէս զօրհնութիւնս
զայս յաւուր յայնմիկ , եւ ուսոյց զսա
44 որդւոցն Իսրայելի՛՛։ Եւ եմուտ Մովսէս
[10]ի ժողովուրդն , եւ խօսեցաւ զամենայն
բանս [14]օրինացս այսոցիկ՛՛ յականջս ժո-
ղովրդեանն , ինքն եւ Յեսու որդի Նաւ-
45 եայ ։ Եւ կատարեաց Մովսէս [15]խօսել
46 ընդ ամենայն Իսրայելի , Եւ ասէ ցնո-
սա , Զգոյշ լերուք սրտիւք ձերովք ա-
մենայն բանիւքս այսոցիկ , զորոց ես
գնեմ վկայութիւն ընդ ձեզ այսօր , զոր
պատուիրիցէք որդւոց ձերոց , պահել եւ
առնել զամենայն բանս օրինացս այսո-
47 ցիկ ։ Զի ոչ եթէ բան ինչ ընդունայն
իցէ ձեզ . զի սա է կեանք ձեր , եւ վասն
այսր բանի երկայնօրեայք լինիցիք ի
վերայ երկրին յոր դուք անցանէք ընդ
Յորդանան ժառանգել զնա ։
48 Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի ի նմին
49 աւուր եւ ասէ , Ել դու ի լեառնն Աբա-
րիմ , ի լեառն Նաբաւ , որ է յերկրին
Մովաբու յանդիման Երիքովի , եւ տես
[16]զերկիրն զոր ես տամ որդւոցն Իսրա-
50 յելի ի կալուածս . Եւ վախճանեաց ան-
դէն ի լերինն յոր ելանիցես , եւ յաւե-
լիր ի ժողովուրդ քո , զոր օրինակ մե-
ռաւ Ահարոն եղբայր քո ի Հովր լերինն ,
51 եւ յաւելաւ առ ժողովուրդ իւր . Փո-
խանակ զի հեստեցէք բանին իմոյ ի մէջ
որդւոցն Իսրայելի ի վերայ ջուրցն Հա-
կառակութեան ի Կադէս , յանապատին
ի Սին . զի ոչ սրբեցէք զիս ի մէջ որդ-
52 ւոցն Իսրայելի ։ Յանդիման տեսցես զեր-
կիրն , եւ անդր մի՛ մտանիցես[17] ։

ԳԼ . ԼԳ

1 Այս է օրհնութիւն զոր օրհնեաց Մով-
սէս այրն Աստուծոյ զորդիսն Իսրայելի
2 յառաջ քան զվախճանելն իւր . Եւ ասէ ,
Տէր ի Սինայէ [18]եկեսցէ , եւ երեւեցաւ
[5]մեզ ի Սէիրայ , եւ [19]փութացաւ ի լեռնէն
Փառանու , [20]բիւրաւորօքն ի Կադեսայ՛՛,

[1] Եբր. վաճառէր Վէմ նոցա զնոսա. եւ Տէր մատնէր զնոսա ։ (31) Զի ոչ իբրեւ զՎէմ մեր վէմ
[2] Եբր. դատաւորք [3] Եբր. Թոյն [4] Եբր. Իմ է վրէժխնդրութիւն եւ հատուցումն [5] Եբր. նոցա
[6] Եբր. արգահատեսցի [7] Եբր. վէմն յոր յուսացեալ էին ի նա [8] Եբր. ուտէին , ըմպէին
[9] Եբր. արդ, զի ես , ես եմ, եւ չիք Աստուած
[10] Եբր. [illegible] [11] Եբր. Եթէ [12] Եբր. զի խնդրեսցէ զվրէժ արեան ծառայից իւրոց , եւ հատուսցէ վրէժ թշնամեաց իւրոց

[13] Եբր. քաւեսցէ զերկիր իւր , զժողովուրդ իւր
[14] Եբր. երգոյս այսորիկ [15] Եբր. խօսել զամենայն բանս զայսոսիկ [16] Եբր. զերկիրն Քանանու
[17] Եբր. [illegible] , զերկիրն՝ զոր ես տամ որդւոցն Իսրայելի [18] Եբր. եկն [19] Եբր. ծագեաց
[20] Եբր. եւ եկն բիւրուք սրբովք

յաջմէ նորա [1]հրեշտակք իւր ընդ իւր։
3 Եւ խնայեաց ի ժողովուրդ իւր. եւ ա-
մենայն սրբեալք ի ներքոյ ձեռին քո, եւ
4 նոքա ընդ քեւ են։ Եւ ընկալաւ ի պատ-
գամաց նորա օրէնս, զոր պատուիրեաց
մեզ Մովսէս, զժառանգութիւն ժողովոյն
5 Յակոբայ։ Եւ եղիցի իշխան ի մէջ սիրե-
ցելոյն, գումարելոց իշխանաց ժողովրդոց
հանդերձ ցեղիւքն Իսրայէլի"։
6 Կեցցէ Ռուբէն եւ մի՛ մեռցի, եւ ե-
ղիցի բազմաւոր թուով։
7 Եւ զայս ասէ զՅուդայէ. Լուր, Տէր,
ձայնի Յուդայի, եւ ի ժողովուրդ նորա
[2]եկեսցես, եւ ձեռք նորա ընտրեսցեն
նմա, եւ օգնական ի թշնամեաց եղի-
ցես նմա"։
8 Եւ զՂեւեայ ասէ, [3]Տուք Ղեւեայ
զյայտնութիւն նորա, եւ զճշմարտու-
թիւն նորա առն անարատի, զոր փոր-
ձեցին փորձանօք, եւ բամբասեցին զնա"
9 ի վերայ Ջրոյն Հակառակութեան։ Որ
ասէր ցհայր իւր եւ ցմայր իւր՝ թէ Ոչ
տեսի զքեզ, եւ զեղբարս իւր ոչ ծա-
նեաւ, եւ զորդիս իւր ոչ գիտաց. [4]զգու-
շացաւ բանից քոց, եւ զուխտ քո [5]պա-
10 հեաց։ Պատմեսցեն զիրաւունս քո Յա-
կոբայ, եւ զօրէնս քո Իսրայէլի. դիցեն
խունկս [6]ի բարկութեան քում հանա-
11 պազ" ի վերայ սեղանոյ քո։ Օրհնեա,
Տէր, զզօրութիւն նորա, եւ ընկալ
զգործս ձեռաց նորա. խորտակեա զմէջս
ի վերայ յարուցելոց թշնամեաց նորա,
եւ ատելիք նորա մի՛ կանգնեսցին։
12 Եւ զԲենիամինէ ասէ, Սիրեցեալն ի
Տեառնէ բնակեսցէ [7]յուսով. եւ Աստուած
հովանի լիցի նմա զամենայն աւուրս,
եւ ի մէջ ուսոց նորա հանգեաւ։
13 Եւ զՅովսեփայ ասէ, Յօրհնութեան
Տեառն երկիր նորա, [8]ի ժամանակաց
երկնից եւ ի ցօղոյ, եւ յանդնդոց աղ-
14 բերաց ի ներքուստ, [8]ի ժամանակի արդ-
եանց արեգական [9]փոփոխմանց, եւ ի
15 գումարելոց առ ամսեան ամսոց," ի
գագաթանց լերանց ի սկզբան, եւ [8]ի
16 գլխոց բլրոց մշտնջենաւորաց, Եւ [10]ըստ
ժամանակի երկրի լրութեան. եւ ըն-
դունելութիւնք երեւելոյն" ի մորենւոջն
եկեսցեն ի վերայ գլխոյն Յովսեփայ եւ
ի վերայ գագաթան փառաւորելոյն ի մէջ
17 եղբարց։ Անդրանիկ ցուլ գեղ նորա, եւ
եղջիւրք միեղջերոյ եղջիւրք նորա.
խոթկեսցէ նոքօք զազգս միանգամայն
մինչեւ ցծագս երկրի. այս են բիւրաւորք
Եփրեմի, եւ սոքա հազարաւորք Մա-
նասէի։
18 Եւ զԶաբուղոնէ ասէ, Ուրախ լեր,
Զաբուղոն, յելս [11]քո։ Եւ զԻսաքարայ
ասէ, Ի բնակութիւնս նոցա ազգք սա-
19 տակեսցին, Եւ անդր կոչեսջիք եւ զո-
հեսջիք զոհ արդարութեան. զի զմեծու-
թիւն ծովու դիեցուսցէ քեզ, եւ զշահս
վաճառաց առ ծովեզերս բնակելոց"։
20 Եւ զԳադայ ասէ, Օրհնեալ որ ընդար-
ձակեաց Գադայ. հանգեաւ իբրեւ զա-
ռեւծ, եւ խորտակեաց [12]զբազուկս եւ
21 զիշխանս. Եւ ետես զիշխանութիւն իւր.
զի անդ բաժանեցաւ երկիր իշխանաց
ժողովրդովք հանդերձ առաջնորդօք ազ-
գաց ցեղիւքն Իսրայէլի", զարդարու-
թիւն Տեառն արար եւ զդատաստան
իւր ընդ Իսրայէլի։
22 Եւ զԴանայ ասէ, Դան՝ կորիւն ա-
ռիւծու, եւ յարձակեսցի ի Բասանայ։
23 Եւ զՆեփթաղիմայ ասէ, Նեփթաղիմ
յագուրդ ընդունելութեանց, եւ լցցի
օրհնութեամբ ի Տեառնէ, եւ [13]զծով եւ
զհարաւ ժառանգեսցէ։
24 Եւ զԱսերայ ասէ, Օրհնեալ յորդւոց
Ասեր, եւ եղիցի ընդունելութիւն եղ-
25 բարց, եւ մխեսցէ յեւղ զոտն իւր։ Եւ
երկաթ եւ պղինձ եղիցին կօշիկք նորա.
[14]ըստ աւուրց քոց եւ" զօրութիւն քո։

[1]Եբր. Հուր՝ օրէնք նոցա։ (3) Նաեւ սիրեաց զժողովուրդս. ամենայն սուրբք նորա ի ձեռին քում. եւ նոքա դեգերին առ ոտիւք քովք ընդունել ի բանից քոց։ (4) Օրէնս պատուիրեաց մեզ Մովսէս. ժառանգութիւն ժողովոյն Յակոբայ։ (5) Եւ եղեւ յԵսուրուն (յԻսրայէլի) թագաւոր, ի գումարել իւր զիշխանս ժողովրդեան հանդերձ ցեղիւքն Իսրայէլի [2]Եբր. մուծցես զնա. ձեռն նորա բաւական լիցի նմա, եւ օգնական ի թշնամեաց նորա եղիցես [3]Եբր. Զթումիմ քո եւ զՈւրիմ քո (Տե՛ս Ելից ԻԸ. 30) առն քում անարատի, զոր փորձեցեր ի Մասսա, ընդ որում հակառակեցար [4]Եբր. զի զգուշացան [5]Եբր. պահեցին [6]Եբր. յռնգունս քո եւ ողջակէզ [7]Եբր. յապահով առ նմա [8]Եբր. ի բարութենէ

[9]Եբր. ի բարութենէ արդասեաց լուսնի [10]Եբր. ի բարութենէ երկրի եւ ի լրութենէ նորա, եւ ի կամաց որոյ բնակէր [11]Եբր. քո, եւ Իսաքար, ի վրանս քո։ (19) Զժողովուրդս ի լեառնն կոչեսցեն. անդ զոհեսցեն զոհ արդարութեան, զի զառատութիւն ծովուց ծծեսցեն, եւ զգանձս ծածկեալս աւազոյ [12]Եբր. զբազուկս, նա՛ եւ զգագաթն. (21) Եւ ետես վասն իւր զընտիրն, զի անդ բաժին օրէնսդրին պահեալ, եւ եկն գլխաւորօք ժողովրդեանն [13]Կամ, զարեւմուտս [14]Եբր. և ըստ աւուրց քոց

26 *Ոչ գոյ իբրեւ զԱստուած [1]սիրել-*
*ւոյն, որ ելանէ յերկինս օգնական քո*
27 *եւ մեծամեծայն հաստատութեան. Եւ*
*ծածկոյթ Աստուծոյ իշխանութեանն, եւ*
*ի զօրութենէ բազկաց մշտնջենաւորաց".*
*եւ մերժեսցէ յերեսաց քոց զթշնամին,*
28 *եւ ասասցէ թէ Կորիր։ Եւ բնակեսցէ*
*Իսրայէլ [2]յուսով առանձինն յերկրին*
*Յակոբայ՝ ի մէջ" ցորենոյ եւ գինւոյ, եւ*
29 *երկինք՝ նմա համբարակ ցօղոյ։ Երանե-*
*եալ ես դու, Իսրայէլ. ո՞ նմանեսցէ*
*քեզ, ժողովուրդ ընտրեալ ի Տեառնէ.*
*[3]պաշտպանեսցէ քեզ օգնական քո, եւ*
*սուր՝ պարծանք քո. եւ ստեսցեն թշնա-*
*միք քո, եւ դու ելցես ի վերայ պարա-*
*նոցի նոցա"։*

## ԳԼ. ԼԴ

1 **Ե**ւ *ել Մովսէս [4]յԱրաբովթ Մովաբայ,*
*ի լեառն Նաբաւ, ի կատարն [5]Փասգա-*
*յոյ, որ է յանդիման Երիքովի, եւ ե-*
*ցոյց նմա Տէր զամենայն երկիրն Գա-*
2 *ղաադու մինչեւ ցԴան, Եւ զամենայն*
*երկիրն Նեփթաղիմայ, եւ [6]զամենայն*
*երկիրն" Եփրեմի եւ Մանասէի, եւ զա-*
*մենայն երկիրն Յուդայ մինչեւ ցծովն*
3 *վերջին, Եւ [7]զանապատն եւ շուրջ զԵ-*
*րիքովաւ, եւ զքաղաքն" Արմաւենեաց*
4 *մինչեւ ցՍեգովր։ Եւ ասէ Տէր ցՄով-*
*սէս, Այս է երկիրն զոր երդուայ Աբրա-*
*համու եւ Իսահակայ եւ Յակոբայ եւ*
*ասեմ, Զաւակի քում տաց զդա. ցուցի*
*աչաց քոց, եւ անդր մի մտանիցես։*
5 *Եւ վախճանեցաւ Մովսէս ծառայ*
*Տեառն յերկրին Մովաբու բանիւ*
6 *Տեառն. Եւ [8]թաղեցին զնա ի Գայի"*
*մերձ ի տունն Փոգովրայ. եւ ոչ ոք*
*գիտաց զգերեզմանն նորա մինչեւ ցայս-*
7 *օր։ Եւ Մովսէս էր ամաց հարիւր եւ*
*քսանից ի վախճանին իւրում, եւ ոչ*
*վատեցին աչք նորա եւ ոչ [9]խարշամեցան*
*ծնօտք" նորա։*
8 *Եւ լացին որդիքն Իսրայելի զՄովսէս*
*[10]յԱրաբովթ Մովաբու [11]առ Յորդանանու*
*յանդիման Երիքովի" աւուրս երեսուն.*
*եւ կատարեցան աւուրք սգոյ լալեացն*
*Մովսիսի։*
9 *Եւ Յեսու որդի Նաւեայ լցաւ հոգւով*
*իմաստութեամբ, զի եդ Մովսէս [12]զձեռն*
*իւր ի վերայ նորա. եւ հնազանդեցան*
*նմա որդիքն Իսրայելի, եւ արարին որ-*
*պէս պատուիրեաց Տէր Մովսիսի։*
10 *Եւ ոչ եւս եկաց մարգարէ յԻսրայելի*
*իբրեւ զՄովսէս, զոր ծանեաւ Տէր*
11 *դէմ յանդիման, Ամենայն նշանօք եւ*
*արուեստիւք զոր առաքեաց Տէր առնել*
*յերկրին Եգիպտացւոց, ի Փարաւոն եւ*
*ի ծառայս նորա եւ յամենայն երկիր նո-*
12 *րա, [13]Զնշանս մեծամեծս, զձեռն հզօր*
*եւ զբազուկ բարձր" զոր արար Մով-*
*սէս առաջի որդւոցն Իսրայելի։*

---

[1] Աշխ. ո՛վ Եսուրուն (Իսրայէլ). նա նստի յերկինս յօգնութիւն քո, եւ ի մեծվայելչութեան իւրում յամպս։ (27) Ապաւէն, Աստուած յաւիտենականն, եւ ի ներքուստ բազուկ մշտնջենաւոր [2] Աշխ. յապահով առանձինն ակն Յակոբայ յերկրի [3] Աշխ. նա է ապար օգնութեան քո, եւ սուր պարծանաց քոց. եւ հնազանդեսցին քեզ թշնամիք քո, եւ դու կոխեսցես ի վերայ բարձանց նոցա [4] Աշխ. ի դաշտացն [5] Աշխ. Փասգայ [6] Աշխ. զերկիրն [7] Աշխ. զհարաւակողմն, եւ զդաշտն հովտին Երիքովի, քաղաքին

[8] Աշխ. թաղեաց զնա ի ձորն յերկրին Մովաբու [9] Աշխ. պակասեաց ոյժ [10] Աշխ. ի դաշտսն [11] Յեբր. դ-ի-ո-ւ-ե [12] Աշխ. զձեռս [13] Աշխ. Ամենայն հզօր ձեռամբ, եւ ամենայն ահիւ մեծաւ



# ԳԼՈՒԽՔ ԳՐՈՑ ՅԵՍՈՒԱՅ ՈՐԴՒՈՅ ՆԱՒԵԱՅ

# ԳԻՐՔ

# ՅԵՍՈՒԱՅ ՈՐԴՒՈՅ ՆԱՒԵԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 *Եւ եղեւ յետ վախճանելոյն Մով-*
*սիսի ծառայի Տեառն, խօսեցաւ*
*Տէր ընդ Յեսուայ որդւոյ Նաւեայ պաշ-*
2 *տօնէի Մովսիսի եւ ասէ, Մովսէս ծա-*
*ռայ իմ վախճանեցաւ. արդ յարուցեալ*
*անցցես ընդ այդ Յորդանան դու եւ ա-*
*մենայն [1]ժողովուրդ քո՝ յերկիրն զոր*
3 *ես տաց որդւոյն Իսրայէլի։ Յամենայն*
*տեղիս յոր հասանիցեն գնացք ոտից ձե-*
*րոց՝ ձեզ տաց զնա, որպէս խօսեցայ*
4 *ընդ Մովսիսի. [2]Զանապատն եւ զԼիբա-*
*նաներն՝ մինչեւ ցգետն մեծ, ցգետն*
*Եփրատ, զամենայն երկիրն Քետացւոց.*
*մինչեւ ցծովն [3]վերջին ի մտից արեւու՝*
5 *ձեզ լիցին սահմանքն։ Եւ ոչ ոք կացցէ*
*ընդդէմ [4]ձեր զամենայն աւուրս կենաց*
*քոց. եւ որպէս էի ընդ Մովսիսի, նոյն-*
*պէս եղէց եւ ընդ քեզ. եւ ոչ թողից*
6 *զքեզ եւ ոչ անտես արարից զքեզ։ Զօ-*
*րացիր եւ քաջ լեր. զի դու բաժանես-*
*ցես ժողովրդեանդ այդմիկ զերկիրն զոր*
7 *երդուայ հարցն [5]քոց տալ դոցա։ Արդ*
*զօրացիր եւ քաջ լեր յոյժ, պահել եւ*
*առնել ըստ ամենայն օրինացն որպէս*
*պատուիրեաց քեզ Մովսէս ծառայ իմ.*
*եւ մի՛ խոտորիցիս ի նոցանէ յաջ կամ*
*յահեակ, զի խելամուտ լիցիս ամենայնի*
8 *զինչ եւ գործեսցես։ Եւ մի՛ մերժեսցի*
*գիր օրինացս այսոցիկ ի բերանոյ քում-*
*մէ, եւ խոկասցես ի դա ի տուէ եւ ի*
*գիշերի, զի իմասցիս առնել զամենայն*
*գրեալսդ ի դմա. եւ ապա աջողեսցիս*
*եւ ուղղեսցես զճանապարհս քո, եւ ա-*
9 *պա խելամուտ լինիցիս։ Ահա պատուի-*
*րեմ քեզ. զօրացիր եւ քաջ լեր. մի՛*
*զանգիտիցես եւ մի՛ երկնչիցիս, զի ընդ*
*քեզ է Տէր Աստուած քո յամենայն տե-*
*ղիս ուր եւ երթայցես։*

10 *Եւ պատուիրեաց Յեսու [6]դպրաց ժո-*
11 *ղովրդեանն եւ ասէ, Մտէք ի մէջ բա-*
*նակի ժողովրդեանդ, եւ հրաման տուեալ*
*ժողովրդեանդ ասացէք, Պատրաստեցէք*
*ձեզ պաշար. զի այլ եւս երեք աւուրք,*
*եւ անցանէք դուք ընդ այդ Յորդանան՝*
*մտանել ունել զերկիրն զոր Տէր Աս-*
*տուած հարցն ձերոց տայ ձեզ ի ժա-*
*ռանգութիւն։*
12 *Եւ ընդ Ռուբենի եւ ընդ Գադայ եւ ընդ*
*կիսոյ ցեղին Մանասէի խօսեցաւ Յեսու*
13 *եւ ասէ, Յիշեցէք զբանն [7]Տեառն զոր*
*պատուիրեաց ձեզ Մովսէս ծառայ [8]նո-*
*րա եւ ասէ, Տէր Աստուած ձեր զհան-*
*գոյց զձեզ, եւ ետ ձեզ զերկիրս զայս։*
14 *Կանայք ձեր եւ մանկունք ձեր եւ ա-*
*նասունք ձեր բնակեսցեն յերկրիս զոր*
*ետ ձեզ Մովսէս յայնկոյս Յորդանանու.*
*բայց դուք զինեալք անցանիցէք յառա-*
*ջագոյն քան զեղբարս ձեր, ամենայն*
*զօրաւոր զօրութեամբ, եւ լինիցիք նո-*
15 *ցա մարտակիցք, Մինչեւ զհանգուցուսցէ*
*Տէր Աստուած ձեր զեղբարս ձեր որպէս*
*եւ զձեզ, եւ ժառանգեսցեն եւ նոքա*
*զերկիրն զոր Տէր Աստուած ձեր տայ*
*նոցա. եւ դառնայցէք յիւրաքանչիւր*
*ժառանգութիւն, եւ ժառանգիցէք զնա*
*զոր ետ ձեզ Մովսէս ծառայ Տեառն*
*յայնկոյս Յորդանանու յարեւելից։*
16 *Եւ պատասխանի տուեալ ասեն ցՅե-*
*սու, Զամենայն զոր միանգամ պա-*
*տուիրես մեզ՝ արասցուք, եւ յամենայն*
*տեղիս ուր առաքիցես զմեզ՝ երթիցուք։*
17 *Եւ ըստ ամենայնի որպէս լուաք Մով-*
*սիսի, նոյնպէս լուիցուք եւ քեզ. բայց*
*միայն Տէր Աստուած [4]մեր եղիցի ընդ*
18 *քեզ, որպէս էր ընդ Մովսիսի։ Եւ այր որ*
*անհնազանդ լինիցի քեզ եւ ոչ լուիցէ բանից*
*քոց, որպէս ինչ հրաման տայցես նմա,*
*մեռցի. բայց միայն զօրացիր եւ քաջ լեր։*

---

[1] Եբր. ժողովուրդս այս [2] Եբր. Յանապատէն և ի Լիբանանէ անտի [3] Եբր. մեծ [4] Եբր. քո [5] Եբր. նոցա

[6] Դպիր ասոր և այլ Եբրայեցւոյ ասէ. նշանակէ ատենակալս։
[7] Յեբր. [illegible] [8] Եբր. Տեառն

Գլ․ Բ

1 Եւ առաքեաց Յեսու որդի Նաւեայ ի
Սատիմայ երկուս երիտասարդս լրտեսել
զերկիրն գաղտ, եւ ասէ, Ելէք լրտեսե-
ցէք զերկիրն եւ զԵրիքով. եւ գնացեալ
[1]երկուց երիտասարդացն եկին յԵրիքով
եւ մտեալ" ի տուն կնոջ պոռնկի միոյ
որում անուն էր Ռախաբ, եւ անդ կա-
2 յան օթեվանս։ Ազդ եղեւ թագաւորին
Երիքովայ եւ ասեն, Ահա արք մտեալ
են այսր գիշերիս յորդւոցն Իսրայելի լրտե-
3 սել զերկիրս։ Եւ առաքեաց թագաւորն
Երիքովայ եւ ասէ ցՌախաբ, Հան այսր
զարսդ մտեալս առ քեզ որ եկին ի տուն
քո [2]գիշերի, զի լրտեսել զամենայն եր-
4 կիրս եկին։ Եւ առեալ կինն զերկոսին
արսն թաքոյց զնոսա, [2]եւ խօսեցաւ ընդ
նոսա" եւ ասէ, Մտին առ իս արք, եւ
5 ես ոչ գիտէի ուստի իցեն. Եւ ընդ առ-
նուլ զդրանն ընդ աղջամուղջս [2]առաւօ-
տին ելին արքն արտաքս եւ ոչ գիտեմ
յո գնացին. պնդեցարուք աւելի զհետ
6 նոցա, թերեւս հասանիցէք նոցա։ Եւ
նա հան զնոսա ի տանիս, եւ թաքոյց զնո-
սա ընդ խրձամբք կտաւոյ զոր դիզեալ
7 էր իւր ի տանիս։ Եւ պնդեցան արքն
զհետ նոցա զճանապարհն Յորդանանու
ի հունն, եւ դուռն փակեցաւ, [2]եւ ե-
ղեւ" իբրեւ ելին խնդրակքն զհետ նոցա։
8 Եւ մինչչեւ ի քուն մտեալ էր նոցա,
9 ել կինն առ նոսա ի տանիսն, Եւ ասէ
ցնոսա, Գիտեմ զի ետ ձեզ Տէր զեր-
կիրս. քանզի անկաւ ահ ձեր ի վերայ
մեր, եւ զի հաշեցան ամենեքեան որ
բնակեալ էին յերկրիս յայսմիկ յերեսաց
10 ձերոց. Քանզի լուաք թէ ցամաքեցոյց
Տէր զԾովն Կարմիր յերեսաց ձերոց յե-
լանելն ձեր յԵգիպտոսէ, եւ զոր ինչ ա-
րարէք ընդ երկուս թագաւորսն Ամովր-
հացւոց որ էին յայնկոյս Յորդանանու,
ընդ Սեհոնի եւ ընդ Ովգայ, զորս սա-
11 տակեցէք։ Եւ իբրեւ լուաք մեք, զար-
հուրեցաք սրտիւք մերովք, եւ ոչ եւս
ոգւոյ չունչ յումեք ի մէնջ յերեսաց ձե-
րոց. զի Տէր Աստուած ձեր, նա է Աս-
տուած յերկինս ի վեր եւ յերկիր ի խո-
12 նարհ։ Եւ արդ երդուարուք ինձ ի Տէր
Աստուած, զի առնեմ ձեզ ողորմութիւն,
եւ արասջիք եւ դուք ողորմութիւն տան
հօր իմոյ. եւ տուք ինձ նշան ճշմարիտ։

[1]Եբր· եկին [2]Յեբր· պակասի

13 Եւ ապրեցուցէք [3]զտուն հօր իմոյ", եւ
զմայր իմ եւ զեղբարս իմ եւ զքորս իմ,
եւ զամենայն որ ինչ իցէ նոցա, եւ
14 փրկեսջիք [4]զանձն իմ" ի մահուանէ։ Եւ
ասեն ցնա արքն, Անձինք մեր փոխա-
նակ ձեր ի մահ, եթէ ոչ պատմիցէք
զբանս զայս զմէնջ. եւ [2]նա ասէ," ե-
ղիցի յորժամ մատնեսցէ [5]ձեզ Տէր զքա-
ղաքս, արասջիք ընդ իս" ողորմութիւն
15 եւ ճշմարտութիւն։ Եւ [6]կախեաց զնոսա
չուանաւ ընդ պատուհանն. քանզի տուն
նորա ի պարսպին էր եւ ինքն բնակեալ էր
16 ի պարսպին։ Եւ ասէ ցնոսա, Զլեառն-
լեռնայն գնասջիք, զի մի պատահեսցեն
ձեզ խնդրակքն. եւ թաքիջիք անդ զե-
րիս աւուրս, մինչեւ դարձցին խնդրակքն
յետոյ ձերմէ. եւ ապա երթիջիք զճա-
17 նապարհն ձեր։ Եւ ասեն արքն ցնա,
Քաւեալ եմք մեք յերդմանէդ, զոր
18 երդմնեցուցեր զմեզ. Ահա մեք մտանի-
ցեմք ի մասն ինչ քաղաքիդ, եւ դու
գնիցես նշանակ զլարդ կարմիր, եւ կա-
պեսցես զպատուհանէդ ընդ որ զմեզ ի-
ջուցեր. եւ զհայր քո եւ զմայր քո եւ
զեղբարս քո եւ զամենայն տուն հօր քո
19 ժողովեսցես առ քեզ ի տունս յայս։ Եւ
եղիցի ամենայն որ ելանէ ի տանէ քում-
մէ արտաքս՝ ինքն եղիցի անձին իւրում
պարտական. եւ մեք քաւեալ լիցուք
[2]յերդմանէդ քումմէ յայդմանէ". եւ որ
միանգամ լինիցին ընդ քեզ ի տան քում,
մեք լիցուք պարտականք, եթէ ձեռն
20 ուրուք մերձեսցի ի նա։ Ապա թէ [2]ոք
մեղանչեսցէ մեզ եւ" յայտնեսցես զբանս
մեր զայսոսիկ, քաւեալ լիցուք յերդմա-
21 նէդ քումմէ յայդմանէ[7]։ Եւ ասէ, Ե-
ղիցի ըստ բանից ձերում, նոյնպէս եղիցի.
եւ արձակեաց զնոսա եւ գնացին. եւ
կապեաց [8]նշան կարմիր ի պատուհանին։
22 Եւ գնացին եւ եկին ի լեռնակողմն,
եւ կացին անդ զերիս աւուրս, մին-
չեւ դարձան խնդրակքն. եւ յուզեցին
խնդրակքն զամենայն ճանապարհն եւ ոչ
23 գտին։ Եւ դարձան երկոքին երիտա-
սարդքն եւ իջին ի լեռնէ անտի եւ եկին
յայնկոյս, եւ հասին առ Յեսու որդի
Նաւեայ, եւ պատմեցին զամենայն անցսն
24 որ անցին ընդ նոսա. Եւ ասեն ցՅեսու

[3]Եբր· զհայր իմ [4]Եբր· զանձինս մեր [5]Եբր· մեզ Տէր զերկիրս, արասցուք ընդ քեզ [6]Եբր· իջոյց [7]Եբր· յայսմ բանէ, զոր ետուր մեզ երդնուլ [8]Եբր· զլարն

թէ մատնեաց Տէր [1]Աստուած ի ձեռս
մեր զամենայն երկիրն, եւ զարհուրե-
ցան ամենայն բնակիչք երկրին ի մէնջ։

ԳԼ. Գ

1 Եւ կանխեաց Յեսու ընդ առաւօտն.
եւ չուեցին ի Սատիմայ եւ եկին մինչեւ
ցՅորդանան, ինքն եւ ամենայն որդիքն
Իսրայելի. եւ բանակեցան անդ յառաջ
2 քան զանցանելն։ Եւ եղեւ յետ երից ա-
3 ւուրց անցին դպիրքն ընդ բանակն. Եւ
պատուիրեցին ժողովրդեանն եւ ասեն,
Յորժամ տեսանիցէք զտապանակ ուխ-
տին Տեառն Աստուծոյ ձերոյ, եւ զքա-
հանայսն [1]մեր եւ" զՂեւտացիսն որ բար-
ձեալ ունիցին զնա, եւ դուք խաղա-
ջիք ի տեղւոյ ձերմէ եւ գնասջիք զհետ
4 նորա. Բայց հեռագոյն լինիցի ընդ ձեզ
եւ ընդ [2]նորա՝ որչափ կանգունք երկուց
հազարաց. [1]զանեղի առնուցուք" եւ ոչ
մերձենայցէք ի նա, զի գիտիցէք զճա-
նապարհն ընդ որ երթայցէք. զի ոչ [3]էք
երթեալ զճանապարհ երեկին եւ ե-
5 ռանդին"։ Եւ ասէ Յեսու ցժողովուրդն,
Սրբեցարուք առ վաղիւ, զի վաղիւ ա-
6 րասցէ ի ձեզ Տէր սքանչելիս։ Եւ խօ-
սեցաւ Յեսու ընդ քահանայսն եւ ասէ,
Առէք զտապանակ ուխտին [1]Տեառն, եւ
գնացէք յառաջագոյն առաջի ժողովր-
դեանն. եւ բարձին քահանայքն զտա-
պանակ ուխտին [1]Տեառն եւ երթային
առաջի ժողովրդեանն։
7 Եւ ասէ Տէր ցՅեսու, Յաւուր յայսմիկ
սկիզբն արարից բարձրացուցանել զքեզ
առաջի ամենայն որդւոցն Իսրայելի, զի
ծանիցեն թէ որպէս էի ընդ Մովսիսի,
8 նոյնպէս եղէց եւ ընդ քեզ։ Եւ դու
պատուիրեա քահանայիցն որ բառնան
զտապանակ ուխտին եւ ասասցես, Յոր-
ժամ մտանիցէք յեզր ջրոյն Յորդանա-
նու, կացջիք ի նմին ի Յորդանան։
9 Եւ ասէ Յեսու ցորդիսն Իսրայելի,
Մատերուք այսր եւ լուարուք զպատ-
10 գամս Տեառն Աստուծոյ ձերոյ։ Եւ ասէ
Յեսու, Այնու գիտասջիք եթէ Տէր կեն-
դանի է ի ձեզ, եւ սատակելով սատա-
կեսցէ յերեսաց ձերոց զՔանանացիսն եւ
զՔետացիսն եւ զԽեւացիսն եւ զՓերեզա-
ցիսն եւ զԳերգեսացիսն եւ զԱմորհացիսն
11 եւ զՅեբուսացիսն. Ահաւասիկ տապա-
նակ ուխտին Տեառն ամենայն երկրի
անցանէ առաջի ձեր ընդ Յորդանան։
12 Եւ դուք յառաջ կարդացէք ի ձէնջ արս
երկոտասան յորդւոց Իսրայելի, այր մի
13 յիւրաքանչիւր ցեղէ. Եւ եղիցի իբրեւ
մխեսցին ոտք քահանայիցն կրելեաց
զտապանակ ուխտին Տեառն ամենայն
երկրի ի ջուրն Յորդանանու, պակասես-
ցէ ջուրն որ իջանէ ի վերուստ, կացցէ
իբրեւ զկարկառակոյտ մի։
14 Եւ եղեւ իբրեւ չուեաց ժողովուրդն ի
խորանաց իւրեանց անցանել ընդ Յոր-
դանան, եւ քահանայքն բարձին զտա-
պանակ ուխտին [1]Տեառն առաջի [1]ամե-
15 նայն ժողովրդեանն։ Եւ իբրեւ մտանէին
[1]քահանայքն որ կրէին զտապանակ ուխ-
տին ի Յորդանան, եւ ոտք քահանայիցն
կրելեաց տապանակին մխեցան յեզր
ջրոյն Յորդանանու, եւ Յորդանան լցեալ
գոյր զափն եւ զափն [4]որպէս յաւուրս
16 հնձոց ցորենոյ", Եւ կացին ջուրքն որ
իջանէին ի վերուստ՝ միաձոյլք, անջրպե-
տեալք, հեռացեալք յոյժ յոյժ, յԱդա-
միէս քաղաքէ որ է [5]մասն Կարիաթա-
րիմայ". եւ որ իջանէին՝ իջին ի ծովն
[6]Արաբացւոց, ի ծովն Աղի, մինչեւ ի
սպառ նուազեցաւ. եւ ժողովուրդն [7]կայր
17 յանդիման Երիքովի։ Եւ կացին քահա-
նայքն որ կրէին զտապանակ ուխտին
Տեառն ի վերայ ցամաքի ի մէջ Յորդա-
նանու [8]պատրաստութեամբ. եւ ամե-
նայն որդիքն Իսրայելի անցին ընդ ցա-
մաք, մինչեւ վախճանեաց ամենայն ժո-
ղովուրդն անցանել ընդ Յորդանան։

ԳԼ. Դ

1 Եւ իբրեւ վախճանեաց ամենայն ժողո-
վուրդն անցանել ընդ Յորդանան, խօ-
2 սեցաւ Տէր ընդ Յեսուայ եւ ասէ, Առ-
եալ [9]քեզ ի ժողովրդենէ այտի արս եր-
կոտասան, այր մի յիւրաքանչիւր ցեղէ,
3 Հրաման տուր նոցա եւ ասասցես, Առէք
դուք ձեզ այտի ի միջոյ Յորդանանու
յանատեղեաց քահանայիցդ պատրաս-
տականս քարինս երկոտասան, եւ տար-
ջիք ընդ ձեզ. եւ դիջիք ի մէջ բանակին
4 ձերոյ ուր բանակիցիք զայս գիշեր։ Եւ
կոչեաց Յեսու արս երկոտասան [10]ի փա-
ռաւորաց որդւոցն" Իսրայելի, մի յիւ-

[1] Յեբր. զօրէն [2] Եբր. նա [3] Եբր. անցէք զճանապարհն յերէկն յեռանդէ

[4] Եբր. զամենայն աւուրս հնձոց [5] Եբր. առընթեր Սարթանայ [6] Եբր. դաշտաց [7] Եբր. անց [8] Կամ, հաստատութեամբ [9] Եբր. ձեզ [10] Եբր. զոր պատրաստեալ էր յորդւոցն

5 բաքանչիւր ցեղէ. Եւ ասէ ցնոսա Յե-
սու, [1]Մատերուք առաջի իմ յանդիման
Տեառն" ի մէջ Յորդանանու, եւ առեալ
բարձցեն անտի իւրաքանչիւր ոք քար
մի ի վերայ ուսոյ իւրոյ ըստ թուոյ ցե-
6 ղիցն Իսրայելի. Զի լինիցին նոքա ձեզ
կալ ի նշանակ հանապազորդ. զի յորժամ
հարցանիցէ ցքեզ առ վաղիւ որդին քո
եւ ասիցէ, Զինչ են քարինքս այսոքիկ
7 ձեզ, Պատմեսցես դու որդւոյն քում եւ
ասիցես, թէ Զի պակասեաց գետն Յոր-
դանան յերեսաց տապանակի ուխտին
Տեառն [2]ամենայն երկրի" մինչ անցանէր
ընդ Յորդանան, նուազեաց ջուրն Յոր-
դանանու. եւ եղիցին ձեզ քարինքս այ-
սոքիկ ի յիշատակ ի մէջ որդւոցն Իսրա-
8 յելի մինչեւ յյաւիտեան: Եւ արարին
որդիքն Իսրայելի որպէս պատուիրեաց
[3]Տէր Յեսուայ". եւ առեալ երկոտասան
քարինս ի միջոյ Յորդանանու, որպէս
հրաման ետ Տէր Յեսուայ, [4]ի վախճանի
անցանելոյ" որդւոցն Իսրայելի, եւ տա-
րան ընդ իւրեանս ի բանակն եւ
9 եդին զնոսա անդ: Եւ կանգնեաց Յեսու
այլ եւս երկոտասան քարինս անդէն ի
Յորդանան, ի տեղւոջ ուր կային ոտք
քահանայիցն որ կրէին զտապանակ ուխ-
տին [2]Տեառն. եւ են անդ մինչեւ ցայսօր
10 ժամանակի: Եւ կային անդ քահանայքն
որ բարձեալ ունէին զտապանակ ուխ-
տին [2]Տեառն ի մէջ Յորդանանու՝ մինչեւ
վախճանեաց Յեսու զամենայն զոր պա-
տուիրեաց Տէր Յեսուայ պատմել ժո-
ղովրդեանն ըստ ամենայնի զոր պատուի-
րեաց Մովսէս Յեսուայ. եւ փութացաւ
11 ժողովուրդն եւ անց: Եւ եղեւ իբրեւ վախ-
ճանեաց ամենայն ժողովուրդն անցանել,
անց եւ տապանակ ուխտին Տեառն, եւ
[5]երկոտասան քարինքն առաջի նոցա":
12 Անցին եւ որդիքն Ռուբենի եւ որդիքն
Գադայ եւ կէս ցեղին Մանասէի կազմեալք
առաջի որդւոցն Իսրայելի, որպէս պա-
13 տուիրեաց նոցա Մովսէս. Զօրք բեւրք
վառեալք ի կռիւ, անցին առաջի Տեառն
ի պատերազմ [6]ընդ Երիքով քաղաքի":
14 Յաւուր յայնմիկ աճեցոյց Տէր զՅեսու
առաջի ամենայն ազգին Իսրայելի, եւ
երկնչէին ի նմանէ որպէս երկնչէին ի
Մովսիսէ որչափ ժամանակս եւ եկեաց:
15 Եւ խօսեցաւ Տէր ընդ Յեսուայ եւ ասէ,
16 Հրաման տուր քահանայիցդ որ բարձեալ
ունին զտապանակ ուխտին վկայութեան՝
17 ելանել ի Յորդանանէ: Եւ հրաման ետ
Յեսու քահանայիցն եւ ասէ, Ելէք ի
18 Յորդանանէ: Եւ եղեւ իբրեւ ելին քա-
հանայքն որ բարձեալ ունէին զտապա-
նակ ուխտին Տեառն ի միջոյ Յորդանա-
նու, եւ եդին զոտն քահանայքն ի ցա-
մաքի, դիմեաց ջուրն Յորդանանու ի
տեղի իւր, եւ գնայր որպէս յերէկն եւ
յեռանդ ընդ ամենայն յատակս նորա:
19 Եւ ել ժողովուրդն ի Յորդանանէ ի
տասներորդում աւուր ամսոյն առաջնոյ.
եւ բանակեցան [2]որդիքն Իսրայելի" ի
Գաղգաղա, յարեւելից կողմանէ Երի-
20 քովի: Եւ զերկոտասան քարինսն զոր
առին ի Յորդանանէ՝ կանգնեաց Յեսու
21 ի Գաղգաղա. Եւ ասէ ցորդիսն Իսրա-
յելի, Յորժամ հարցանիցեն որդիքն ձեր
22 առ վաղիւ եւ ասասցեն, Զինչ են քա-
րինքս այսոքիկ, Պատմեսջիք որդւոց ձե-
րոց թէ՝ Ցամաքաւ անց Իսրայէլ ընդ
23 Յորդանան, Ի ցամաքեցուցանել Տեառն
Աստուծոյ [7]մերոյ զջուրսն Յորդանանու
յերեսաց [8]նոցա մինչեւ անցին", որպէս
արար Տէր Աստուած [9]մեր ընդ ծովն
Կարմիր, զոր ցամաքեցոյց [2]Տէր Աս-
տուած մեր" առաջի մեր մինչեւ ան-
24 ցաք. Զի ծանիցեն ամենայն ազգք երկ-
րի թէ [10]զօրութիւն Տեառն զօրաւոր է,
եւ զի դուք պաշտիցէք զՏէր Աստուած
ձեր զամենայն ժամանակս:

## Գլ. Ե

1 Եւ եղեւ իբրեւ լուան ամենայն թա-
գաւորք Ամովրհացւոց, որ էին յայնկոյս
Յորդանանու [11]առ ծովեզերբն, եւ թա-
գաւորքն Փիւնիկեցւոց" որ առ ծովե-
զերբն, եթէ ցամաքեցոյց Տէր [2]Աստուած
զՅորդանան գետ առաջի որդւոցն Իսրա-
յելի յանցանելն նոցա, հաշեցան սիրտք
նոցա [2]եւ զարհուրեցան", եւ ոչ գոյր ի
նոսա [12]իմաստութիւն եւ ոչ մի" յերե-
սաց որդւոցն Իսրայելի:
2 Ընդ այնու ժամանակաւ ասէ Տէր
ցՅեսու, Արա դու քեզ սուր ի գայլա-

[1]Եբր. Անցէք առաջի տապանակին Տեառն Աս-
տուծոյ ձերոյ [2]Յեբր. պակասէ [3]Եբր. Յեսու
[4]Եբր. ըստ թուոյ ցեղից [5]Եբր. քահանայքն ա-
ռաջի ժողովրդեանն [6]Եբր. ընդ դաշտն Ե-
րիքովի

[7]Եբր. ձերոյ [8]Եբր. ձերոց մինչեւ անցէք [9]Եբր.
ձեր [10]Եբր. ձեռն [11]Եբր. յարեւմտից, եւ
թագաւորքն Քանանացւոց [12]Եբր. ոգի

խաղ վիմէ. եւ նստեալ թլփատեսցես
3 զորդիսն Իսրայելի կրկնակի։ Եւ արար
իւր Յեսու սուրս քարեղէնս պայլախա-
զեայս, եւ թլփատեաց զորդիսն Իսրա-
յելի ի տեղւոջն որ կոչէր Բլուր անթլփա-
տից։ [1]Եւ զոր օրինակ յայտնեաց Յե-
սու զորդիսն Իսրայելի որ էին ի ճանա-
պարհի անդ, որ ընաւ չէին թլփա-
տեալք յելելոյն յԵգիպտոսէ, զամենե-
4 սեան թլփատեաց Յեսու։ Եւ այս ժո-
ղովուրդ է զոր թլփատեաց Յեսու. ա-
մենայն ժողովրդեանն ելելոյ յԵգիպտո-
սէ զարու մանուկ. քանզի ամենայն
արք՝՝ պատերազմողք մեռան յանապա-
տին անդէն ի ճանապարհին յելանելն
5 իւրեանց յերկրէն Եգիպտացւոյ։ Զի
թլփատեալք էին ամենայն ժողովուրդն
որ ելին, եւ ամենայն ժողովուրդն որ
ծնան յանապատին ի ճանապարհին ելա-
նելոյ նոցա յերկրէն [2]Եգիպտացւոց.
6 Քանզի դքառասուն եւ զերկու ամս
շրջեցաւ Իսրայէլ յանապատին Մադա-
բեայ, վասն որոյ անթլփատք էին բա-
զումք ի պատերազմողայն ելելոց յերկ-
րէն Եգիպտացւոց՝՝ որք անհնազանդե-
ցան պատուիրանայն Աստուծոյ. որոց
եւ սահմանեաց Տէր չտեսանել զերկիրն
զոր [3]երդուաւ հարցն նոցա տալ [4]նոցա.
7 զերկիր՝ որ բղխէ զկաթն եւ զմեղր։ Եւ
փոխանակ նոցա կացոյց զորդիս նոցա՝
զոր թլփատեաց Յեսու, քանզի անթլ-
փատք էին, վասն լինելոյ նոցա անթլ-
8 փատս ի ճանապարհին։ Եւ իբրեւ թլփա-
տեցաւ ամենայն ազգն, հանդարտու-
թիւն կալեալ նստան անդէն ի բանակին
9 մինչեւ ողջացան։ Եւ ասէ Տէր ցՅե-
սու, Յաւուր յայսմիկ բարձի զնախա-
տինս Եգիպտացւոց ի ձէնջ. եւ կոչեաց
զանուն տեղւոյն այնորիկ Գաղգաղա
10 մինչեւ ցայսօր. Եւ անդ բանակեցան
որդիքն Իսրայելի. եւ արարին [5]որդիքն
Իսրայելի՝՝ զզատիկն ի չորեքտասանե-
րորդում աւուր ամսոյն յերեկորեայ, [6]յա-
11 րեւելից Երիքովի ի դաշտի անդ՝՝։ Եւ

[1]Եբր. (4) Եւ այս է բանն վասն որոյ թլփատեաց Յեսու. ամենայն արուք հանմօրէն ժողովրդեանն ելելոյ յԵգիպտոսէ, արք [2]Եբր. Եգիպտացւոց՝ ոչ թլփատեցան. (6) Քանզի դքառասուն ամ շրջեցան որդիքն Իսրայելի յանապատին, մինչեւ սպառել համօրէն ազգին արանց պատերազմողաց ելելոց յԵգիպտոսէ [3]Եբր. երդուաւ Տէր [4]Եբր. մեզ [5]Յեբր. պ—ի—ե [6]Եբր. ի դաշտսն Երիքովի

կերան ի ցորենոյ երկրին զայգոյ զատ-
կին բաղարջ, եւ նորի՝ յաւուր յայնմիկ։
12 Եւ պակասեաց մանանայն[7] յետ ու-
տելոյ նոցա ի ցորենոյ երկրին, եւ ոչ
եւս գտանէր որդւոյն Իսրայելի մանա-
նայ. եւ [8]ժողովեցին զպտուղ երկրին
[9]Փիւնիկեցւոց ի տարւոջն յայնմիկ։
13 Եւ եղեւ մինչ էր Յեսու յԵրիքով,
ամբարձեալ զաչս իւր ետես զի կայր ա-
ռաջի նորա այր, եւ սուսեր մերկ ի ձե-
ռին նորա. եւ մատուցեալ Յեսուայ ասէ
ցնա, Մե՞ր ես թէ ի թշնամեաց մերոց։
14 Եւ նա ասէ ցնա, [10]Ես զօրավար եմ զօ-
15 րու Տեառն, եւ այժմ եկի։ Եւ անկաւ
Յեսու ի վերայ երեսաց իւրոց եւ երկիր
եպագ եւ ասէ ցնա, Տէր, զի՞նչ հրա-
16 ման տացես ծառայի քում։ Եւ ասէ զօ-
րավարն Տեառն ցՅեսու, Լոյծ զկօշիկս
քո յոտից քոց, զի տեղիդ յորում կաս՝
սուրբ է։ Եւ արար այնպէս Յեսու։

Գլ. Զ

1 Եւ Երիքով փակեալ եւ ամրացեալ էր
յերեսաց որդւոցն Իսրայելի, եւ ոչ ոք
ելանէր ի նմանէ, եւ ոչ ոք մտանէր։
2 Եւ ասէ Տէր ցՅեսու, ահա ես տամ ի
ձեռս քո զԵրիքով եւ զթագաւորն որ
ի նմա, եւ զզօրաւորս զօրութեամբ։
3 Բայց դու ած պատեա զնովաւ զամե-
նայն մարտիկս [11]շուրջանակի յոբել-
նաւն, ի լսել ձեզ զձայն եղջեր փողոյ. եւ
եղիցի իբրեւ հարկանիցէք զփողն պա-
տեսջիք զքաղաքն ամենայն արք պա-
տերազմողք՝՝ շուրջ զքաղաքաւն մի
անգամ. այսպէս առնիցէք զվեց օր։
4 Եւ եւթն քահանայ առցեն զեւթն փողսն
եղջերեայս յոբելեան առաջի տապա-
նակին. եւ յաւուրն եւթներորդի պա-
տեսջիք զքաղաքն եւթն անգամ. եւ
քահանայքն հարցեն զփողսն եղջերեայս։
5 Եւ [12]աղաղակեսցեն առհասարակ ամե-
նայն ժողովուրդն. եւ յաղաղակելն նո-
ցա՝՝ կործանեսցին ինքնին պարիսպք
քաղաքին ի ներքոյ նոցա. եւ մտցէ ա-
մենայն ժողովուրդն դիմեալ իւրաքան-
չիւր հանդէպ երեսաց իւրոց ի քաղաքն։
6 Եւ [13]եմուտ Յեսու որդի Նաւեայ առ

[7]Եբր. յետ գալոյն յ—եւ—, ի վաղիւն [8]Եբր. կերան [9]Եբր. Քանանացւոց [10]Եբր. Ոչ, զի ես [11]Եբր. շուրջանակի, պատեսջիք [12]Եբր. եղիցի յերկարել նոցա հարկանել զեղջերսն յոբելեան, ի լսել ձեր զձայն փողոյն՝ աղաղակեսցեն առ հասարակ ամենայն ժողովուրդն աղաղակ մեծ, և [13]Եբր. կոչեաց

քահանայսն եւ ասէ ցնոսա, Առէք զտա-
պանակ ուխտին. եւ եւթն քահանայք
առցեն եւթն փող եղջերեայ յարկեան
7 առաջի տապանակին Տեառն։ Եւ խօսե-
ցաւ [1]ընդ նոսա եւ ասէ, Պատուէր
տուք ժողովրդեանն անցանել պատել"
զքաղաքն. եւ մարտիկքն երթիցեն
[2]վառեալք առաջի տապանակին Տեառն։
8 Եւ եղեւ իբրեւ պատուիրեաց ժողովըր-
դեանն եւ եւթանեքին քահանայքն որ
ունէին եւթն փողս [3]նուիրականս, [4]անց-
ցեն նոյնպէս առաջի Տեառն՝ եւ [5]աղ-
ղեսցեն ուժգին". եւ տապանակ ուխ-
տին Տեառն [6]երթիցէ զհետ նոցա։
9 Եւ մարտիկքն [7]երթիցեն առաջի, եւ
քահանայքն եւ որ հարկանիցեն զփողսն
եղջերեայս՝ վերջապահք զհետ տապա-
նակին Տեառն, հարկանելով զփողսն
10 եղջերեայս երթիցեն"։ Եւ ժողովրդեանն
պատուէր ետ Յեսու եւ ասէ, Մի՛ ա-
ղաղակիցէք, եւ մի՛ ոք լուիցէ զբար-
բառ ձեր, եւ մի՛ ելանիցէ բան ի բերա-
նոյ ձերմէ, մինչեւ յօրն յայնմ [8]ինքն
ազդ արասցէ" աղաղակելոյ, եւ ապա
11 աղաղակեսջիք։ Եւ շուրջ եկեալ տա-
պանակի ուխտին Տեառն զքաղաքաւն
[9]գնաց անդրէն ի բանակն եւ անդ [10]ագաւ։
12 Եւ [2]յաւուրն երկրորդի" յարեաւ Յե-
սու ընդ առաւօտն. եւ բարձին քահա-
13 նայքն զտապանակն Տեառն։ Եւ եւթն
քահանայքն առին եւթն փողս [11]նուի-
րականս, եւ երթային առաջի Տեառն.
եւ քահանայքն հարին զփողսն, եւ այլ
եւս ամբոխն ամենայն, եւ գնացին դարձ-
եալ անդրէն ի բանակն. եւ ապա մտա-
նէին մարտիկքն, եւ այլ եւս ամբոխն"
զհետ տապանակի ուխտին Տեառն. եւ
երթային եւ հարկանէին զփողսն եղ-
14 ջերեայս։ Եւ պատեցին զքաղաքն յա-
ւուրն երկրորդի մի անգամ [2]ի մօտոյ,
եւ գնացին դարձեալ անդրէն ի բանակն.
15 այնպէս արարին զվեց օր։ Եւ եղեւ
յաւուրն եւթներորդի, յարեան ընդ ելս
առաւօտուն եւ պատեցին զքաղաքն ըստ
16 նմին օրինակի եւթն անգամ. [12]Եւ եղեւ"
յեւթներորդում նուագի պատեցին՝ հա-
րին քահանայքն զփողսն. եւ ասէ Յե-
սու ցորդիսն Իսրայէլի, Արդ աղաղա-
կեցէք, զի մատնեաց Տէր ի ձեռս
17 մեր զքաղաքս։ Եւ եղիցի քաղաքն
նզովեալ, ինքն եւ ամենայն որ ինչ ի
նմա իցէ ի Տեառնէ [2]զօրութեանց. բայց
զՌախաբ պոռնիկ ապրեցուսջիք, զնա
եւ զամենայն որ ինչ իցէ ի տան նորա,
զի թաքոյց զհրեշտակսն զոր արձակե-
18 ցաք։ Այլ դուք զգոյշ լինիջիք ի նզո-
վիցն. գուցէ ցանկացեալք առնուցուք
ինչ դուք ի նզովից անտի, եւ առնիցէք
զբանակ որդւոցն Իսրայէլի ի նզովս եւ
19 [13]ջնջիցէք զմեզ"։ Ամենայն ոսկի եւ ար-
ծաթ եւ պղինձ եւ երկաթ եղիցի սուրբ
Տեառն. ի գանձ Տեառն մտցէ։
20 Եւ աղաղակեաց ժողովուրդն, եւ հա-
րին քահանայքն զփողսն. իբրեւ լուաւ
ժողովուրդն զձայն փողոյն՝ աղաղակե-
ցին ամենայն ժողովուրդն առհասարակ
մեծ եւ ուժգին աղաղակաւ, եւ անկաւ
պարիսպն շուրջանակի. եւ ել ամենայն
ժողովուրդն ի քաղաքն իւրաքանչիւր
21 հանդէպ իւր, եւ առին զքաղաքն. Եւ
նզովեցին զնա եւ որ ինչ էր ի քաղա-
քին յառնէ մինչեւ ցկին, եւ յերիտա-
սարդէ մինչեւ ցծեր, եւ յարջառոյ մին-
չեւ ցաւանակ եւ ցէշ, արկին ի բերան սրոյ։
22 Եւ ցերկուս երիտասարդսն որ լրտե-
սեցին զերկիրն՝ ասէ Յեսու, Մտէք ի
տուն կնոջն պոռնկի, եւ հանէք զնա
անտի, եւ զամենայն ինչ որ նորա իցէ,
23 որպէս երդուայք նմա։ Եւ մտին երկու
երիտասարդքն որոց լրտեսեալ էր զքա-
ղաքն՝ [2]ի տուն կնոջն," եւ հանին զՌա-
խաբ [2]պոռնիկ, եւ զհայր նորա եւ զմայր
նորա եւ զեղբարս նորա, եւ զամենայն
որ ինչ էր նորա, եւ զամենայն ազգա-
տոհմն նորա, եւ կացուցին զնա արտաքոյ
24 բանակին Իսրայէլի։ Եւ զքաղաքն այրե-
ցին հրով եւ ամենայն ինչ որ ի նմա
էր, բաց յոսկւոյ եւ յարծաթոյ եւ ի
պղնձոյ եւ յերկաթոյ զոր ետուն ի գանձ
25 Տեառն մուծանել։ Եւ զՌախաբ պոռնիկ
եւ զտուն նորա հայրենի եւ զամենայն
ինչ որ նորա էր՝ ապրեցոյց Յեսու. եւ

[1]Ոմն. առ ժողովուրդն. Անցէք, պատեցէք [2]Ոմն. պ–կաս [3]Ոմն. յորելեանս, կամ, ազդեցութեան [4]Ոմն. անցցեն [5]Ոմն. հարցեն զփողսն [6]Ոմն. երթայր [7]Ոմն. երթային առաջի քահանայիցն որ հարկանէին զփողսն, եւ վերջապահքն երթային զհետ տապանակին. երթային եւ հարկանէին զփողսն [8]Ոմն. ազդ արարից ձեզ [9]Ոմն. մի անգամ, գնացին [10]Ոմն. ագան [11]Ոմն. յորելեանս առաջի տապանակի Տեառն. երթային եւ հարկանէին զփողսն. եւ մարտիկքն երթային առաջի նոցա, եւ վերջապահքն երթային

[12]Ոմն. բայց յաւուր յեւթներորդի պատեցին զքաղաքն եւթն անգամ։ (16) Եւ եղեւ [13]Ոմն. խռովիցէք զնա

բնակեցաւ ի մէջ Իսրայէլի մինչեւ ցայ-
օր ժամանակի. վասն զի թաքոյց
զլրտեսսն զոր առաքեաց Յեսու [1]յաւուր
յայնմիկ” լրտեսել զԵրիքով։
26 Եւ [2]նզովեաց Յեսու յաւուր յայնմիկ
[1]զԵրիքով եւ ասէ, Անիծեալ լիցի մարդն
առաջի Տեառն, որ կանգնեսցէ եւ շի-
նեսցէ զքաղաքն զԵրիքով. անդրանկաւ
իւրով [3]դնել զհիմունս նորա, եւ կրտսե-
րաւ իւրով կանգնեսցէ զդրունս պարսպի
նորա։ [1]Եւ այնպէս արար Ոզան Բեթե-
լացի. Աբիրոնաւ անդրանկաւ իւրով եդ
զհիմունս նորա, եւ Զեբծեբով կրտսերով
իւրով կանգնեաց զդրունս նորա”
27 Եւ էր Տէր ընդ Յեսուայ, եւ էր ա-
նուն նորա ընդ ամենայն երկիր։

ԳԼ. Է

1 Եւ յանցեան որդիքն Իսրայէլի յան-
ցանս, եւ գողացան ի նզովից անտի. եւ
առ Աքար որդի Քարմեայ, որդւոյ Զամբ-
րեայ, որդւոյ Զարայի ի ցեղէ Յուդայ
ի նզովից անտի, եւ բարկացաւ սրտմտու-
թեամբ Տէր որդւոցն Իսրայէլի։
2 Եւ առաքեաց Յեսու արս յԵրիքովէ
ի Գայի որ է [4]յանդիման Բեթեղայ, եւ
ասէ ցնոսա, [5]Լրտեսեցէք զԳայի”. եւ
3 ելին արքն եւ լրտեսեցին զԳայի։ Եւ
դարձան առ Յեսու եւ ասեն, Մի՛ ելցէ
ամենայն ժողովուրդս, այլ իբրեւ երկու
հազարք կամ երեք հազարք արանց ել-
ցեն եւ [6]պաշարեսցեն զքաղաքն”. մի՛
տանիր անդ զամենայն ժողովուրդն,
4 զի սակաւք են։ Եւ ելին անդր ի ժո-
ղովրդենէն իբրեւ երեք հազարք, եւ
5 փախեան յերեսաց արանցն Գայեայ. Եւ
կոտորեցին ի նոցանէ արք Գայեայ արս
երեսուն եւ վեց, եւ հալածեցին զնոսա ի
դրանէն մինչեւ [7]խորտակեցին զնոսա”, եւ
վիրաւորեցին ի զառիվայրին. եւ զարհու-
րեալ ժողովրդեանն եւ եղեւ իբրեւ զջուր։
6 Եւ պատառեաց Յեսու զհանդերձս իւր,
եւ անկաւ ի վերայ երեսաց իւրոց յեր-
կիր առաջի տապանակին Տեառն մինչեւ
ցերեկոյ, ինքն եւ ծերքն Իսրայէլի, եւ
7 արկին հող զգլխովք իւրեանց։ Եւ ասէ
Յեսու, Աղաչեմ զքեզ, Տէր, Տէր,
ընդէ՞ր իսկ ընաւ [8]անցանելով անցոյց
ծառայ քո” զժողովուրդս զայս ընդ
Յորդանան, մատնել [9]զմեզ Ամովրհաց-
ւոցն եւ” կորուսանել զմեզ. լաւ էր թէ
անդէն դադարեալ եւ բնակեալ էաք առ
8 եզերբ Յորդանանու։ Յիս, Տէր, եւ
արդ զի՞նչ ասացից, որովհետեւ կործա-
ցոյց Իսրայէլ զպարանոց իւր առաջի
9 թշնամեաց իւրոց, Եւ լուեալ Քանանաց-
ւոցն եւ ամենայն բնակչաց երկրին՝ պա-
տեսցեն զմեզ եւ սատակեսցեն[10] յերկրէ.
եւ զի՞նչ արասցես զանուն քո մեծ։
10 Եւ ասէ Տէր ցՅեսու, Յառն կաց.
զի՞ անկեալ կաս ի վերայ երեսաց քոց.
11 Մեղաւ ժողովուրդն, եւ անց զուխտիւ
իմով զոր ուխտեցի նոցա. եւ գողացան
եւ առին ի նզովիցն, սատեցին եւ արկին
12 յամանս իւրեանց. Եւ ոչ եւս կարիցեն
որդիքն Իսրայէլի կալ առաջի թշնամ-
եաց իւրեանց. այլ դարձուցեն զպար-
անոցս առաջի թշնամեաց իւրեանց, զի
եղեն ի նզովս. եւ ոչ եւս յաւելից լինել
ընդ ձեզ, եթէ ոչ բարձցէք զնզովդ
13 զայդ ի միջոյ ձերմէ։ Արի, սրբեա զժո-
ղովուրդ, եւ [11]սրբեսցին սրբել առ վա-
ղիւ” այսպէս ասէ Տէր Աստուած Իսրայ-
էլի, Նզովք են ի ձեզ, Իսրայէլ. ոչ կարիցէք
կալ առաջի թշնամեաց ձերոց, մինչեւ
14 բարձցէք զնզովսն ի ձէնջ։ Եւ ժողովես-
ջիք ամենեքեան ընդ առաւօտն ըստ ցեղից
ձերոց. եւ եղիցի ցեղն զոր ցուցցէ Տէր՝
մատուսջիք ըստ տոհմից, եւ զտոհմն զոր
յանդիմանեսցէ Տէր՝ մատուսջիք ըստ տանց,
եւ տուն զոր յանդիմանեսցէ Տէր՝ մատուս-
15 ջիք ըստ արանց. Եւ որ յանդիմանեսցի ի
նզովին, այրեսցի ինքն հրով եւ ամենայն
տուն իւր, եւ ամենայն ինչ որ նորա իցէ.
զի անց զուխտիւն Տեառն, եւ արար
անօրէնութիւն ի մէջ Իսրայէլի։
16 Եւ կանխեաց Յեսու ընդ առաւօտն,
եւ մատոյց զժողովուրդն ըստ ցեղիցն
իւրեանց, եւ յանդիմանեցաւ ցեղն Յու-
17 դայի. Եւ մատուցաւ ցեղն Յուդայի
ըստ տոհմից, եւ յանդիմանեցաւ տոհմն
Զարայի. եւ մատուցաւ տոհմն Զարայի
ըստ արանց, եւ յանդիմանեցաւ Զամբրի.
18 Եւ մատուցաւ տուն նորա ըստ արանց,
եւ յանդիմանեցաւ Աքար որդի Քարմեայ,
որդւոյ Զամբրեայ, որդւոյ Զարայի, ի
19 ցեղէն Յուդայ։ Եւ ասէ Յեսու ցԱքար,
Որդեակ իմ, տուր փառս այսօր Տեառն

[1] Յեբր. դ—խ—ե [2] Եբր. Երդուաւ [3] Եբր. դիցէ
[4] Եբր. մերձ ի Բեթաւան յարեւելից [5] Եբր. Ելէք եւ լրտեսեցէք զերկիրն [6] Եբր. Հարցեն զԳայի
[7] Եբր. ի Սեբարիմ [8] Եբր. անցուցանելով անցուցեր

[9] Եբր. զմեզ ի ձեռս Ամովրհացւոց [10] Եբր.—յերկրէ—, զանուն մեր [11] Եբր. ասասցես. Սրբեցարուք առ վաղիւ. զի

Աստուծոյ Իսրայէլի, եւ տուր խոստո-
վանութիւն եւ պատմեա ինձ զինչ գոր-
ծեցեր, եւ մի՛ թաքուցաներ յինէն։
20 Պատասխանի ետ Աքար եւ ասէ ցՅեսու,
Արդարեւ ես մեղայ առաջի Տեառն Ա-
ստուծոյ Իսրայէլի. զայս ինչ եւ զայս
21 գործեցի. Տեսի յաւարին ամղան մի
նկարէն գեղեցիկ, եւ երկերիւր երկ-
դրամեան արծաթոյ, եւ լեզու մի ոսկի
որոյ յիսուն երկդրամեան էր ձոյլ նորա,
եւ ցանկացեալ նոցա առի. եւ ահաւա-
նիկ թաքուցեալ կայ ընդ հողով ի վրանի
իմում, եւ արծաթն թաքուցեալ կայ
22 ի ներքոյ նոցա։ Եւ առաքեաց Յեսու
հրեշտակս արս, եւ ընթացան ի վրանն
[1]ի բանակն. եւ անդ թաքուցեալ կայր
ի վրանի նորա, եւ արծաթն ի ներքոյ
23 նոցա. Հանին զայն ի վրանէ անտի եւ
բերին առ Յեսու եւ առ [2]ծերսն Իսրա-
յէլի, եւ եդին առաջի Տեառն։
24 Եւ առ Յեսու զԱքար զորդի Զարայ,
եւ [3]եհան զնա ի ձորն Աքովրայ", եւ
զուստերս նորա եւ զդստերս նորա եւ
զարջառ նորա եւ զէշ նորա եւ զամե-
նայն զոչխարս նորա, եւ զվրանս նորա
եւ զամենայն ինչս նորա, եւ ամենայն
Իսրայէլ ընդ նմա, եւ ած զնոսա յԷմակն
25 Աքովրայ։ Եւ ասէ Յեսու, Ընդէ՞ր [4]սա-
տակեցեր զմեզ. սատակեսցէ" զքեզ Տէր
ըստ աւուրս ըստ այսմիկ. եւ քարկո-
ծեցին զնա ամենայն Իսրայէլ քարամբք,
եւ այրեցին զնոսա հրով. եւ քարկոծե-
26 ցին զնոսա քարամբք։ Եւ կուտեցին ի
վերայ նոցա կարկառ մեծ քարանց մինչեւ
ցայսօր։ Եւ դադարեաց Տէր ի սրտմտու-
թենէ բարկութեան իւրոյ. վասն այնո-
րիկ անուանեաց զնա Էմակ Աքովրայ
մինչեւ ցայսօր։

ԳԼ. Ը

1 Եւ ասէ Տէր ցՅեսու, Մի՛ երկնչիր եւ
մի՛ զանգիտիցես. առ դու ընդ քեզ զա-
մենայն արս պատերազմողս, եւ յա-
րուցեալ ելցես ի Գայի. ահա ես տամ
ի ձեռս քո զթագաւորն Գայեայ եւ զժո-
ղովուրդ նորա, եւ զքաղաք նորա եւ
2 զերկիր նորա. Եւ արասցես ընդ Գայի
եւ ընդ թագաւորն նորա, զոր օրինակ
արարեր ընդ Երիքով եւ ընդ թագաւորն
նորա, եւ զաւար նորա եւ զանասուն
նորա ածցես յաւարի։ Եւ կացուսցես քեզ
դարանամուտս քաղաքին զկնի նորա։
3 Եւ յարեաւ Յեսու եւ ամենայն ժողո-
վուրդն պատերազմող ելանել ի Գայի.
եւ ընտրեաց Յեսու երեսուն հազար ա-
րանց զօրաւորս զօրութեամբ, եւ ա-
4 ռաքեաց զնոսա զցայգ. Եւ պատուիր-
եաց նոցա եւ ասէ, Տեսէք, զի դուք
դարանամուտ լինիցիք յետուստ քաղա-
քին. եւ մի՛ կարի հեռի լինիջիք ի քա-
ղաքէն, եւ կայջիք պատրաստք ամե-
5 նեքին. Եւ ես եւ ամենայն ժողովուրդն
որ ընդ իս՝ մատիցուք ի քաղաքն. եւ
եղիցի յորժամ ելանիցեն բնակիչքն
Գայեայ ընդդէմ մեր իբրեւ զառաջինն,
6 փախիցուք յերեսաց նոցա. Եւ իբրեւ
ելցեն զկնի մեր, մեկնեսցուք զնոսա ի
քաղաքէ անտի, [5]եւ ասիցեն թէ Փախ-
եան յերեսաց մերոց իբրեւ զառաջինն.
եւ իբրեւ փախիցուք յերեսաց նոցա,
7 Դուք յարիջիք ի դարանէ անտի եւ
[6]մտջիք ի քաղաքն եւ հարջիք" զքա-
ղաքն. եւ տացէ զնոսա Տէր Աստուած
8 [7]Իսրայէլի ի ձեռս մեր"։ Եւ եղիցի յոր-
ժամ առնուցուք զքաղաքն, այրեսջիք
զնա հրով. ըստ [8]այսմ օրինակի" առնի-
9 ջիք, ահա պատուիրեցի ձեզ։ Եւ ա-
ռաքեաց զնոսա Յեսու, եւ գնացին ի
դարանն, եւ մտին զօղեցան ի մէջ Բե-
թելայ եւ ի մէջ [9]Գանայ ի ծովակող-
մանէն Գայեայ. եւ ագաւ Յեսու զայն
գիշեր ի մէջ ժողովրդեանն։
10 Եւ կանխեաց Յեսու ընդ առաւօտն
արար հանդէս ժողովրդեանն. եւ ել
ինքն եւ ծերքն Իսրայէլի առաջի ժո-
11 ղովրդեան ի վերայ Գայեայ։ Եւ ամե-
նայն զօր պատերազմող [10]ելին ընդ նո-
սա, եւ" գնացին ելին եկին հանդէպ
քաղաքին [1]յարեւելից կողմանէ, եւ դա-
րանամուտք քաղաքին ի ծովակոյս կող-
մանէ", եւ բանակեցան ի հիւսիսոյ
Գայեայ, եւ ձոր ընդ մէջ նոցա եւ
12 Գայեայ։ Եւ առ հինգ հազար արանց
եւ եմոյծ զնոսա ի դարան ընդ [11]Բեթաւն
13 եւ ընդ ծովն Գայեայ"։ Եւ արկ [12]զժո-
ղովուրդն եւ" զամենայն բանակն ի հիւ-

[1] Յեբր. գ—ի—ւ [2] Եբր. ամենայն որդւոց [3] Եբր. զարծաթն եւ զամղանն, եւ զլեզուն ոսկի [4] Եբր. խռովեցեր զմեզ. խռովեսցէ

[5] Եբր. զի [6] Եբր. կալջիք [7] Եբր. ձեր ի ձեռս ձեր [8] Եբր. բանի Տեառն [9] Եբր. Գայեայ [10] Եբր. որ ընդ նմա [11] Եբր. Բեթէլ եւ ընդ Գայի ի ծովակոյս կողմանէ քաղաքին [12] Եբր. ժողովուրդն

մխոյ քաղաքին, եւ վերջ նոցա ի ծա-
մակողմն քաղաքին. եւ անց Յեսու
զգիշերն զայն ընդ մէջ ձորոյն։
14 Եւ եղեւ իբրեւ ետես թագաւորն
Գայեայ, [1]փութացաւ կանխեաց եւ ել
ընդդէմ նոցա. եւ արք քաղաքին եր-
թային հանդէպ նոցա՝ ի պատերազմ,
ինքն եւ ամենայն ժողովուրդ իւր ի
ժամանակին յանդիման [2]Արաբայ. եւ
ինքն ոչ գիտէր եթէ դարան գործեալ
15 իցէ նմա յետուստ քաղաքին։ [3]Իբրեւ
ետես Յեսու դարձաւ անդրէն յոյց
կրուկն՝, եւ ամենայն Իսրայէլ յերեսաց
նոցա, եւ փախեան ընդ ճանապարհ ա-
16 նապատին։ Եւ [4]ստիպեաց ամենայն ժո-
ղովուրդ երկրին՝ երթալ զհետ նոցա.
եւ պնդեցան երթալ զկնի [5]որդւոցն Իս-
րայելի. եւ նոքա՝ մեկնեցան ի քաղա-
17 քէ անտի։ Եւ ոչ մնաց ի Գայի եւ ի Բե-
թէլ՝ որ ոչ պնդեցաւ զհետ Իսրայելի.
եւ թողին զքաղաքն ի բաց, եւ յար-
ձակեցան զհետ Իսրայելի։
18 Եւ ասէ Տէր ցՅեսու, Ձգեա զձեռն քո
զգայիսանդ որ ի ձեռին քում ի վերայ
քաղաքին, զի ի ձեռս քո մատնեցի զնա.
[6]եւ դարանակալքն եկեսցեն վաղվաղակի ի
տեղւոջէ իւրեանց.՝ եւ ձգեաց Յեսու զգա-
յիսանն [7]եւ զձեռս իւր՝ ի վերայ քաղաքին.
19 Եւ դարանակալքն յարեան վաղվաղակի ի
տեղւոջէ իւրեանց եւ ելին իբրեւ ձգեաց
զձեռն, եւ մտին ի քաղաքն, եւ առին
զնա, եւ փութացեալ այրեցին զքաղաքն
20 հրով։ Եւ հայեցեալ բնակչացն Գայեայ
ի թիկունս իւրեանց, տեսանէին զի ե-
լանէր ծուխ քաղաքին մինչեւ յերկինս.
եւ ոչ եւս ուրեք զոյր նոցա փախուստ այսր
կամ անդր. եւ ժողովուրդն որ թաքու-
ցեալ էր յանապատին՝ յարեան ի վերայ
21 հետամտացն։ Եւ Յեսու եւ ամենայն
ժողովուրդն իբրեւ տեսին թէ առին դա-
րանակալքն զքաղաքն, եւ զի ելանէր
ծուխ քաղաքին մինչեւ յերկինս, դար-
ձան անդրէն ընդ կրունկն, եւ հարին
22 զարսն Գայեայ։ Եւ նոքա ելին ի քա-
ղաքէ անտի ընդ առաջ նոցա. եւ եղեն
ի մէջ [8]բանակին. նոքա անտի՝ եւ սո-
քա աստի. եւ հարին զնոսա մինչեւ չմնա-
լոյ ի նոցանէ ապրեալ եւ փախստական։
23 Եւ զթագաւորն Գայեայ ձերբակալ ա-
րարին կենդանւոյն, եւ ածին առ Յեսու։
24 Եւ իբրեւ դադարեցին որդիքն Իս-
րայելի ի կոտորելոյ զամենայն Գայեցիս,
[9]զորս ի դաշտս, զորս ի լերինս զառի-
վայրին մինչեւ հալածեցին՝ զնոսա. եւ
անկան ամենեքին ի սուր սուսերի մին-
չեւ ի սպառ. եւ դարձաւ [10]Յեսու ի Գա-
25 յի, եւ եհար զնա սրով սուսերի։ Եւ ե-
ղեն անկեալք յաւուր յայնմիկ յառնէ
մինչեւ ցկին՝ երկոտասան հազար, ամե-
26 նայն բնակիչքն Գայեայ։ Եւ Յեսու ոչ
դարձոյց զձեռն իւր զոր ձգեաց գայի-
սաւն՝ մինչեւ նզովեաց զամենայն
27 բնակիչսն Գայացւոց. Բայց յանասնոց եւ
յաւարէ քաղաքին զոր աւարեցին որ-
դիքն Իսրայելի ըստ հրամանի Տեառն՝
28 որպէս հրամայեաց Տէր Յեսուայ։ Եւ
այրեաց Յեսու զքաղաքն հրով եւ արար
զնա բլուր հողոյ՝ անշէն յաւիտեան մին-
29 չեւ ցայսօր։ Եւ զթագաւորն Գայեայ
կախեաց [11]զերկճիւղ փայտէ, եւ էր ի
վերայ փայտին կախեալ՝ մինչեւ ցերե-
կոյ. եւ ընդ մտանել արեգականն հրա-
մայեաց Յեսու եւ իջուցին զնա ի փայ-
տէ անտի, եւ ընկեցին զնա ի գուբ առ
դրան քաղաքին, եւ կուտեցին ի վերայ
նորա կարկառ քարանց մինչեւ ցայսօր։
30 Յայնժամ շինեաց Յեսու սեղան Տեառն
Աստուծոյ Իսրայելի ի լերինն Գեբաղ
31 Որպէս պատուիրեաց Մովսէս ծառայ
Տեառն որդւոցն Իսրայելի. զոր օրինակ
գրեալ է յօրէնսն Մովսիսի, սեղան յող-
ջոց քարանց՝ յորս ոչ մխրճեալ իցէ եր-
կաթ. եւ անդ եհան ողջակէզ Տեառն
32 եւ զոհ [12]փրկութեան։ Եւ գրեաց Յեսու
ի վերայ քարանցն զերկրորդումն օրինացն
զօրէնսն Մովսիսի, զոր գրեաց առաջի
33 որդւոցն Իսրայելի։ Եւ ամենայն Իսրա-
յէլ, եւ ծերք նոցա եւ դատաւորք նո-
ցա եւ դպիրք նոցա, երթային աստի
անտի հանդէպ տապանակին, եւ քա-
հանայքն Ղեւտացիք բարձին զտապա-
նակ ուխտին Տեառն, եւ եկն եւ բնակ.
եւ էին կէսք ի նոցանէ մերձ ի լեառն
Գարիզին, եւ կէսք ի նոցանէ մերձ ի
լեառն Գեբաղ, որպէս պատուիրեաց
Մովսէս ծառայ Տեառն՝ օրհնել նախ

[1] Եբր. փութացան եւ կանխեցին, եւ ելին արք քաղաքին ընդդէմ Իսրայելի [2] Այսինքն, դաշտին [3] Եբր. Եւ կերպարանեցան Յեսու [4] Եբր. կոչեցան ամենայն ժողովուրդն որ ի քաղաքին [5] Եբր. Յեսուայ եւ [6] Յեբր. պակասէ [7] Եբր. որ ի ձեռին իւրում [8] Եբր. Իսրայելի

[9] Եբր. ի դաշտին, յանապատին ուր հալածեալ էր նոցա [10] Եբր. ամենայն Իսրայէլ [11] Եբր. զփայտէ [12] Եբր. խաղաղութեան

34 զժողովուրդն ։ Եւ ապա ընթերցաւ զա-
մենայն բանս օրինացս այսոցիկ, զօրհ-
նութիւնս եւ զանէծս՝ ըստ ամենայն
35 գրելոցն [1]յօրէնսն Մովսիսի"։ Եւ ոչ էր
բան յամենայնէ զոր պատուիրեաց Մով-
սէս Յեսուայ՝ զոր ոչ ընթերցաւ Յեսու
յականջս ամենայն եկեղեցւոյն Իսրայե-
լի, արանց եւ կանանց եւ մանկանց,
եւ եկացն յեցելոցն յԻսրայէլ ։

ԳԼ. Թ

1 Իբրեւ լուան ամենայն թագաւորքն [2]Ա-
մովրհացւոց որ յայնկոյս Յորդանանու՝
որ լեռնայինք եւ որ դաշտայինք, եւ որ
յամենայն ծովեզերս ծովուն մեծի եւ
որք առ Լիբանանիւն, եւ Քետացիքն
եւ Ամովրհացիք եւ [2]Գերգեսացիք եւ"
Քանանացիք եւ Փերեզացիք եւ Խե-
2 ւացիք եւ Յեբուսացիք, եկին ի միա-
սին առ ի պատերազմ ընդ Յեսուայ եւ
ընդ Իսրայելի՝ ամենեքին առ հասարակ ։
3 Եւ բնակիչքն Գաբաւոնի լուան զոր ինչ
արար Յեսու ընդ Երիքով եւ ընդ Գայի.
4 Արարին նոքա խորամանկութեամբ՝ եկ-
եալք պաշարեալք եւ պատրաստութեամբ,
առին քուրձս հնացեալս ի վերայ [3]ուսոց
իւրեանց, եւ տիկս գինւոյ հնացեալս եւ
5 պատառոտունս կարկատեալս. Եւ [2]ան-
կանուրդք կօշկաց նոցա," հողաթափք
իւրեանց հնացեալք եւ կարկատեալք
յոտս իւրեանց, եւ հանդերձք իւրեանց
հնացեալք զանձամբք իւրեանց, եւ հաց
պաշարի իւրեանց չորացեալ եւ ճճեկեր.
6 Եւ եկին առ Յեսու ի բանակն Իսրայելի
ի Գաղգաղա, եւ ասեն ցՅեսու եւ ցա-
մենայն Իսրայէլ, Յերկրէ հեռաստանէ
եկեալ եմք, եւ արդ՝ դիք ընդ մեզ
7 ուխտ ։ Եւ ասեն [4]որդիքն Իսրայելի ցՔո-
ռացին, Տես՝ գուցէ" առ իս բնակեալ ի-
ցես, եւ զիա՞րդ դնեմք ընդ քեզ ուխտ ։
8 Եւ ասեն ցՅեսու, Ծառայք քո եմք ։ Եւ
ասէ ցնոսա Յեսու, Ուստի՞ էք դուք,
9 եւ ուստի՞ եկեալ էք ։ Եւ ասեն ցնա,
Յերկրէ հեռաստանէ յոյժ եկին ծառայք
քո յանուն Տեառն Աստուծոյ քո, զի
լուաք զանուն նորա, եւ զոր ինչ արար
10 ընդ Եգիպտոս, Եւ զոր ինչ արար ընդ եր-
կուս թագաւորսն Ամովրհացւոց որ էին
յայնկոյս Յորդանանու, ընդ Սեհոն թա-
գաւորն Եսեբոնի, եւ ընդ Ովգ թագա-
ւորն Բասանու՝ որ բնակեալ էր յԱստա-
11 րովթ [2]եւ յԵդրային"։ Եւ խօսեցան ընդ
մեզ ծերքն մեր, եւ ամենայն բնակիչք
երկրին մերոյ եւ ասեն, Առէք ձեզ պա-
շար ճանապարհի, եւ երթայք ընդ առաջ
նոցա, եւ ասասջիք ցնոսա, Ծառայք
ձեր եմք, եւ արդ դիք ընդ մեզ ուխտ ։
12 [2]Զի զհացս զայս մեր, ջերմ առաք պա-
շար ի տանց մերոց յաւուր յորում ելաք
ի տանց մերոց եւ եկաք առ ձեզ, եւ
13 արդ՝ չորացաւ եւ եղեւ ճճեկեր. Եւ
տիկքս զոր լցաք գինւով՝ նորք էին, եւ
պատառեցան. եւ ձորձք մեր եւ կօշիկք
մաշեցան ի բազում երկայն ճանապար-
14 հէն ։ Եւ [5]առին իշխանքն զպաշար նո-
15 ցա" եւ զՏէր ոչ հարցին ։ Եւ արար ընդ
նոսա խաղաղութիւն Յեսու, եւ ուխ-
տեաց նոցա ուխտ ապրեցուցանել զնո-
սա. եւ երդուան նոցա իշխանք ժո-
16 ղովրդեանն ։ Եւ եղեւ յետ երից աւուրց
զհետ ուխտելոյ նոցա զուխտն՝ լուան
եթէ մօտաւորք են, եւ անդէն առ նո-
17 սա բնակեն ։ Չուեցին որդիքն Իսրայե-
լի, եւ եկին ի քաղաքս նոցա յաւուրն
երրորդի. եւ քաղաքք նոցա էին Գա-
բաւոն եւ Կեփիրան եւ Բերովթ, եւ քա-
18 ղաքք յԱրիմայ ։ Եւ ոչ մարտեան ընդ
նոսա որդիքն Իսրայելի. քանզի երդուան
նոցա [2]ամենայն իշխանք ժողովրդեանն
ի Տէր Աստուած Իսրայելի. եւ տրտնջե-
ցին ամենայն ժողովուրդն զիշխանացն ։
19 Եւ ասեն ամենայն իշխանքն ցամենայն
ժողովուրդն, Մեք երդուաք նոցա ի Տէր
Աստուած Իսրայելի, եւ ոչ կարեմք սաել
20 նոցա ։ Արդ՝ զայս արասցուք նոցա ապ-
րեցուցանել զնոսա, [2]եւ առասցուք զնո-
սա." եւ մի՛ եկեսցէ ի վերայ մեր բար-
կութիւն վասն երդմանն զոր երդուաք
21 նոցա ։ Եւ ասեն ցնոսա իշխանքն, Կեց-
ցեն, եւ լինիցին փայտահարք եւ ջրա-
կիրք ամենայն ժողովրդեանն. եւ ե-
ղեն փայտակոտորք եւ ջրաբերք, որ-
22 պէս եւ ասացին նոցա իշխանքն ։ Եւ կո-
չեաց զնոսա [2]միահամուռ Յեսու, եւ
խօսեցաւ ընդ նոսա եւ ասէ, Ընդէ՞ր
խաբեցէք [6]զիս եւ ասացէք, Հեռի եմք
ի ձէնջ յոյժ, եւ դուք [7]գաւառականք էք
23 բնակչացս որ ի միջի մերում"։ Եւ արդ՝
անիծեալք էք, եւ մի՛ պակասեսցէ ի ձէնջ

[1] Եբր. ի գիրս օրինաց [2] Յեբր. պակաս [3] Եբր. իշոց
[4] Եբր. արքն Իսրայէլի ցԽեւացին՝ Գուցէ

[5] Կամ, ընկալան զարմն ի պաշարոց նոցա [6] Եբր. զմեզ [7] Եբր. ի միջի մերում բնակէք

ծառայ, փայտահատ եւ ջրհոր [1]ինձ
24 եւ Աստուծոյ իմում"։ Պատասխանի ե-
տուն եւ ասեն ցՅեսու, Ազդեցութեամբ
ազդ եղեւ [2]մեզ, զոր ինչ հրամայեաց
Տէր Աստուած քո Մովսիսի ծառայի իւ-
րում, տալ ձեզ զերկիրս զայս, եւ սա-
տակել զամենայն բնակիչս սորա յերե-
սաց ձերոց. եւ երկեաք յոյժ վասն ան-
ձանց մերոց յերեսաց ձերոց, եւ ա-
25 րարաք զիրն զայն։ Եւ արդ ահաւասիկ
եմք ընդ ձեռամբ ձերով. որպէս հա-
ճոյ [3]է ձեզ եւ որպէս կամիք" առնել՝
26 արարէք։ Եւ արարին նոցա այնպէս,
եւ ապրեցոյց զնոսա Յեսու [4]յաւուր յայն-
միկ" ի ձեռաց որդւոցն Իսրայէլի, եւ
27 ոչ կոտորեցին զնոսա։ Եւ կացոյց զնոսա
յաւուր յայնմիկ փայտահատս եւ ջրա-
հերս [4]ամենայն ժողովրդեանն եւ սե-
ղանոյն [5]Աստուծոյ մինչեւ ցայսօր ժամա-
նակի, եւ ի տեղւոջն զոր ընտրեաց Տէր։

ԳԼ. Ժ

1 Եւ իբրեւ լուաւ [6]Ադոնիբեզեկ թագա-
ւորն Երուսաղեմի, թէ առ Յեսու զԳայի
եւ սատակեաց զնա. զոր օրինակ արար
ընդ Երիքով եւ ընդ թագաւոր նորա,
նոյնպէս արար ընդ Գայի եւ ընդ թագա-
ւոր նորա, եւ զի անձնատուրք եղեն
բնակիչք Գաբաւոնի ʼառ Յեսու եւ" առ
2 Իսրայէլ եւ եղեն ի միջի նոցա, Զար-
հուրեցան յանձինս իւրեանց յոյժ, քանզի
գիտէին թէ քաղաք մեծ է Գաբաւոն
որպէս մի ի մայրաքաղաքաց թագա-
ւորացն. քանզի նա մեծ էր քան զԳայի,
3 եւ ամենայն արք նորա զօրաւորք։ Եւ
առաքեաց [6]Ադոնիբեզեկ արքայ Երուսա-
ղեմի առ Եղամ արքայ Քեբրոնի, եւ առ
Փիրամ արքայ Յերիմութայ, եւ առ
Յեփիէ արքայ Լաքիսայ, եւ առ Դաբիր
4 արքայ Եգղոնայ, եւ ասէ, Եկայք ելէք
առ իս եւ օգնեցէք ինձ, եւ տացուք
պատերազմ ընդ Գաբաւոնի. զի անձնա-
տուրք եղեն առ Յեսու եւ առ որդիսն
5 Իսրայէլի։ Եւ գումարեցան եւ ելին
հինգ թագաւորքն [7]Յեբուսացւոց, թա-
գաւորն Երուսաղեմի եւ թագաւորն
Քեբրոնի եւ թագաւորն Յերիմութայ եւ
թագաւորն Լաքիսայ եւ թագաւորն Եգղո-
նայ, ինքեանք եւ ամենայն ժողովուրդ
նոցա, եւ նստան զԳաբաւոնիւ եւ պա-
շարեցին զնա։
6 Եւ առաքեցին բնակիչք Գաբաւոնի
առ Յեսու ի բանակն [4]Իսրայէլի ի Գաղ-
գաղա՝ եւ ասեն, Մի՛ թուլացուցես
զձեռն քո ի ծառայից քոց, ել առ մեզ
վաղվաղակի եւ ապրեցո զմեզ, եւ օգնեա
մեզ. զի ժողովեալ են ի վերայ մեր ա-
մենայն թագաւորք Ամորհացւոց որ
7 բնակեալ են ի լեռնակողմանն։ Եւ ել
Յեսու ի Գաղգաղայ, ինքն եւ ամենայն
զօրն պատերազմօղ ընդ նմա, եւ ամե-
8 նայն որ կարող էր զօրութեամբ։ Եւ
ասէ Տէր ցՅեսու, Մի՛ երկնչիցես ի նո-
ցանէ, զի ի ձեռս քո մատնեցից զնոսա.
եւ ոչ ժուժկալեսցէ ի նոցանէ եւ ոչ մի
9 ոք առաջի [8]ձեր։ Եւ եհաս ի վերայ նոցա
Յեսու յանկարծակի զգիշերն ամենայն
10 ելեալ ի Գաղգաղայ։ Եւ զարհուրեցոյց
զնոսա Տէր յերեսաց Իսրայէլի, եւ եբեկ
զնոսա բեկումն մեծ ի Գաբաւոն. եւ
[9]հալածեցին զնոսա ընդ ճանապարհ զա-
ռիվայրին Բեթորոնայ, եւ [10]կոտորեցին
զնոսա մինչեւ յԱզեկա եւ ցՄակեդա։
11 Եւ ի փախչելն նոցա յերեսաց որդւոցն
Իսրայէլի ընդ զառիվայրն Բեթորոնայ,
եւ Տէր արկ ի վերայ նոցա քարինս [11]կար-
կուտի յերկնից մինչեւ ցԱզեկա". եւ եղեն
բազումք այնոքիկ որ մեռան ի քարանց
կարկտին, քան զայնոսիկ զորս կոտորե-
ցին որդիքն Իսրայէլի սրով պատերազմի։
12 Յայնժամ խօսեցաւ Յեսու ընդ Տեառն
յաւուր յորում մատնեաց Տէր [4]Աստուած
զԱմորհացին ընդ ձեռամբ որդւոցն Իս-
րայէլի, [12]ի ժամանակին յորում խորտակե-
աց զնոսա ի Գաբաւոն, եւ խորտակե-
ցան յերեսաց Իսրայէլի, եւ ասէ Յեսու",
Կացցէ արեգակն հանդէպ Գաբաւոնի եւ
13 լուսին հանդէպ ձորոյն Եղոմայ։ Եւ կա-
ցին արեգակն եւ լուսին ի կայի իւրեանց,
մինչեւ էառ [13]Աստուած զվրէժ ի թշնամ-
եաց [14]նոցա։ Ո՞չ ապաքէն գրեալ է այս
ի գիրս Ուղղութեան. Եւ եկաց արե-
գակն ի մէջ երկնից, եւ ոչ խաղայր ընդ
արեւմուտս՝ մինչեւ ցկատարումն աւուր
14 միոյ։ Եւ ոչ եղեւ այսպիսի օր ոչ յա-
ռաջ եւ ոչ յետոյ, լսել [5]Աստուծոյ ձայնի

[1] Օրբ. վասն տան Աստուծոյ իմոյ [2] Օրբ. ծառայից քոց [3] Օրբ. եւ որպէս ուղիղ է առաջի ձեր [4] Յ Օրբ. [illegible] [5] Օրբ. Տեառն [6] Օրբ. Ադոնի սեդեկ [7] Օրբ. Ամորհացւոց

[8] Օրբ. քո [9] Օրբ. Հալածեաց [10] Օրբ. կոտորեաց [11] Օրբ. մեծամեծս յերկնից մինչեւ ցԱզեկա, եւ մեռան [12] Օրբ. և ասէ յանդիման Իսրայէլի [13] Օրբ. ժողովուրդն [14] Օրբ. իւրոց

մարդոյ. զի Տէր պատերազմեցաւ [1]խառն
ընդ" Իսրայելի ։
15 Եւ դարձաւ Յեսու եւ ամենայն Իս-
րայէլ ընդ նմա ի բանակն ի Գաղգաղա ։
16 Եւ փախեան հնգեքին թագաւորքն այ-
նոքիկ եւ թաքեան ի յայրին ի Մակեդա ։
17 Եւ ազդ եղեւ Յեսուայ եւ ասեն, Գտան
հինգ թագաւորքն թաքուցեալք ի յայրի
18 անդ ի Մակեդա ։ Եւ ասէ Յեսու, Թա-
ւալեցուցէք վէմս մեծամեծս ի բերան
այրին, եւ կացուցէք ի վերայ նոցա արս
19 պահել զնոսա. Բայց դուք մի՛ դադարէք
ի պնդելոյ զհետ թշնամեաց ձերոց, եւ
հասէք ի վերջս նոցա, եւ մի՛ տայք նոցա
թոյլ մտանել ի քաղաքս իւրեանց. քանզի
մատնեաց զնոսա Տէր Աստուած ի ձեռս
20 [2]մեր ։ Եւ եղեւ իբրեւ դադարեաց Յեսու
եւ ամենայն որդիքն Իսրայելի ի կոտո-
րելոյ զնոսա կոտորումն մեծ յոյժ մինչեւ
ի սպառ, եւ ապրեալքն որ ապրեցան ի
21 նոցանէ՝ մտին ի քաղաքս ամուրս, Եւ
դարձաւ ամենայն ժողովուրդն ի բանակն
առ Յեսու ի Մակեդա ողջանդամք. եւ
ոչ ոք [3]կանչեաց յորդւոցն Իսրայելի
22 լեզուաւ իւրով ։ Եւ ասէ Յեսու, Բացէք
զայրն եւ հանէք առ իս զհնգեսին թա-
23 գաւորսն յայրէ անտի ։ Եւ արարին այն-
պէս, եւ հանին առ նա զհնգեսին թա-
գաւորսն յայրէ անտի, զթագաւորն Ե-
րուսաղեմի եւ զթագաւորն Քեբրոնի
եւ զթագաւորն Յերիմութայ եւ զթա-
գաւորն Լաքիսայ եւ զթագաւորն Եգ-
24 ղոնայ ։ Եւ իբրեւ հանին զնոսա առ
Յեսու, եւ կոչեաց Յեսու զամենայն
Իսրայէլ եւ զյառաջամարտիկս երթալ
ընդ նմա, եւ ասէ ցնոսա, Մատիք յա-
ռաջ եւ դիք զոտս ձեր ի վերայ պարա-
նոցաց [4]նոցա. եւ մատուցեալ եդին զոտս
իւրեանց ի վերայ պարանոցաց նոցա ։
25 Եւ ասէ ցնոսա Յեսու, Մի՛ երկնչիք ի
նոցանէ եւ մի՛ զանգիտիցէք, քաջացա-
րուք եւ զօրացարուք, զի այսպէս ա-
րասցէ Տէր ընդ ամենայն թշնամիս ձեր
26 ընդ որս դուք մարտնչիցիք ։ Եւ կո-
տորեաց զնոսա Յեսու, եւ կախեաց
զնոսա հնգեսին զփայտից, եւ կային
27 կախեալ զփայտիցն մինչեւ ցերեկոյ ։ Եւ
եղեւ ընդ արեւմտանն հրամայեաց Յեսու
եւ իջուցին զնոսա ի փայտիցն, եւ ընկե-
ցին յայրն յոր փախուցեալ անկեալ էին,
եւ թաւալեցուցին քարինս մեծամեծս
ի վերայ այրին մինչեւ ցայսօր ժամանակի ։
28 Եւ զՄակեդա առին յաւուր յայնմիկ.
եւ կոտորեցին զնա սրով սուսերի եւ
զթագաւորն նորա, եւ սատակեցին զնա
եւ զամենայն շնչաւոր որ ի նմա. եւ ոչ
ոք մնաց ի նմանէ ապրեալ եւ փախու-
ցեալ. եւ արար ընդ թագաւորն Մա-
կեդայ, զոր օրինակ արար ընդ թագա-
ւորն Երիքովի ։
29 Եւ գնաց Յեսու եւ ամենայն Իսրայէլ
ընդ նմա ի Մակեդայէ ի Լեբնա, եւ պա-
30 շարեցին զԼեբնա ։ Եւ մատնեաց [5]զնա
Տէր ի ձեռս Իսրայելի. եւ առ զնա" եւ
զթագաւոր նորա, եւ կոտորեաց զնա
սրով սուսերի եւ զամենայն շնչաւոր որ
ի նմա, եւ ոչ մնաց ի նմա եւ ոչ մի
ապրեալ եւ փախստական. եւ արար ընդ
թագաւորն նորա՝ զոր օրինակ արար ընդ
թագաւորն Երիքովի ։
31 Եւ գնաց Յեսու եւ ամենայն Իսրայէլ
ընդ նմա ի Լեբնայէ ի Լաքիս, եւ նստաւ
32 զնովաւ եւ պաշարեաց զնա ։ Եւ մատ-
նեաց Տէր զԼաքիս ի ձեռս Իսրայելի, եւ
առ զնա յաւուրն երկրորդի, եւ կոտոր-
եաց զնա բերանով սրոյ, եւ սատակեաց
զնա[6], զոր օրինակ արար ընդ Լեբնա ։
33 Յայնժամ ել Ելամ արքայ Գազերայ օգ-
նել Լաքիսայ, եւ եհար զնա Յեսու սրով
սուսերի եւ զզօրս նորա մինչեւ չմնալ
ի նոցանէ ապրեալ եւ փախստական ։
34 Եւ չուեաց Յեսու եւ ամենայն Իս-
րայէլ ընդ նմա ի Լաքիսայ յԵգղոն, եւ
[7]նստաւ զնովաւ եւ պաշարեաց զնա եւ
մատնեաց զնա Տէր ի ձեռս Իսրայելի".
35 Եւ առ զնա յաւուր յայնմիկ, եւ կոտոր-
եաց զնա սրով սուսերի, եւ զամենայն
շնչաւոր որ ի նմա յաւուր յայնմիկ կոտո-
րեցին, զոր օրինակ արարին ընդ Լաքիս ։
36 Եւ չուեաց Յեսու եւ ամենայն Իս-
րայէլ ընդ նմա յԵգղոնայ ի Քեբրոն, եւ
37 նստաւ զնովաւ. Եւ առին զնա, եւ հարին
զնա բերանով սուսերի, եւ զթագաւորն
նորա[8], եւ զամենայն շնչաւոր որ ի նմա,
եւ ի նմա ոչ ոք էր ապրեալ. եւ արարին
ընդ նմա որպէս արարին ընդ Եգղոն. եւ
սատակեցին զնա եւ զամենայն շնչաւոր
եւ զամենայն ինչ որ ի նմա ։

[1] Եբր. վասն [2] Եբր. ձեր [3] Եբր. կանչեաց ումեք [4] Եբր. թագաւորացդ այդոցիկ

[5] Եբր. զնա եւս Տէր ի ձեռս Իսրայելի [6] Եբր. յաւելու, եւ զամենայն շնչաւոր որ ի նմա
[7] Եբր. պաշարեցին զնա եւ պատերազմեցան ընդ նմա
[8] Եբր. յաւելու, եւ զամենայն քաղաքս նորա

38 Եւ դարձաւ Յեսու եւ ամենայն Իս-
րայէլ ի Դաբիր, եւ նստեալ գնովաւ՝
39 Առին զնա եւ զթագաւորն նորա եւ զամե-
նայն [1]գօրս նորա. եւ հարին զնա բե-
րանով սրոյ, եւ սատակեցին զնա եւ
զամենայն շնչաւոր որ ի նմա, եւ ոչ
թողին եւ ոչ մի ապրեալ. զոր օրինակ
արարին ընդ Քեբրոն՝ նոյնպէս արարին
ընդ Դաբիր եւ ընդ թագաւորն նորա,
եւ որպէս արարին ընդ Լեբնա եւ ընդ
թագաւորն նորա։
40 Եւ եհար Յեսու զամենայն երկիրն լեռնա-
կան եւ [2]զՆագեբ եւ զդաշտականսն, եւ
[3]զԱսեդովթ եւ զամենայն թագաւորս
[4]նորա, եւ ոչ եթող [5]ի նմանէ ապրեալ,
եւ զամենայն շնչաւոր սատակեցին [5]ի
նմանէ, զոր օրինակ պատուիրեաց Տէր
41 Աստուած Իսրայէլի։ Եւ կոտորեաց զնոսա
Յեսու ի Կադէսբառնեայ մինչեւ ցԳազա,
եւ զամենայն երկիրն Գոսոմայ մինչեւ
42 ցԳաբաւոն։ Եւ զամենայն թագաւորսն
նոցա, եւ զերկիր նոցա առ Յեսու միան-
գամայն. զի Տէր Աստուած Իսրայէլի [6]հա-
43 մագունդ կռուէր ընդ" Իսրայէլի։ Եւ դար-
ձաւ Յեսու եւ ամենայն Իսրայէլ ընդ
նմա ի բանակն ի Գաղգաղա։

## Գլ. ԺԱ

1 Իբրեւ լուաւ Յաբին արքայ Ասովրայ,
առաքեաց առ Յոբաբ արքայ [7]Մառոնայ
եւ առ արքայն Սէմերոնի եւ առ ար-
2 քայն Աքիփայ, Եւ առ թագաւորս [8]մեծի
Սիդոնայ ի լեռնայինսն, եւ յԱրաբաթ
հանդէպ Քեներեթայ, եւ ի դաշտայինն
եւ ի Նաբեթդովր, եւ ի ծովեզերեայսն,
3 Քանանացիս յարեւելից կողմանէ, ի ծո-
վեզերեայսն Ամովրհացւոց", եւ ի Քե-
տացիս եւ ի Փերեզացիս եւ Յեբուսա-
ցիս որ ի լերինն, եւ ի Խեւացիսն որ
4 ընդ Հերմոնիւ ի Մասեփա։ Եւ ելին
ինքեանք եւ [9]թագաւորք իւրեանց ընդ
նոսա, եւ" զօր բազում իբրեւ զաւազ
առ ափն ծովու բազմութեամբ, եւ ե-
5 րիվարք եւ կառք բազում յոյժ։ Գու-
մարեցան ամենայն թագաւորքն այնո-
քիկ եւ եկին ի միասին, եւ բանակե-
ցան միանգամայն առ ջրովն Մառո-
նայ՝ տալ պատերազմ ընդ Իսրայէլի։
6 Եւ ասէ Տէր ցՅեսու, Մի՛ երկնչիր
յերեսաց նոցա, զի վաղիւ ի սոյն ժամու
մատնեցից ես զամենեսեան զնոսա վան-
եալս առաջի որդւոյն Իսրայէլի. զերի-
վարս նոցա կարթակոտորս արասցես,
7 եւ զկառս նոցա այրեսցես հրով։ Եւ եկն
Յեսու եւ ամենայն զօրն պատերազմող
ընդ նմա ի վերայ նոցա ի ջուրն Մառո-
նայ յանկարծօրէն, եւ անկան ի վերայ
8 նոցա [5]ի լեռնակողմանն։ Եւ մատնեաց
զնոսա Տէր ընդ ձեռամբ Իսրայէլի, եւ
կոտորեալ զնոսա՝ արարին հալածական
մինչեւ ցՄեծն Սիդոն, եւ մինչեւ ցՄա-
սերեփովթմայիմ, եւ մինչեւ ցդաշտն Մա-
սեփայ ընդ արեւելս. եւ կոտորեաց զնոսա
9 մինչեւ չմնալոյ ի նոցանէ ապրեալ։ Եւ
արար ընդ նոսա Յեսու որպէս պատուիր-
եաց նմա Տէր. զերիվարս նոցա կարթակո-
տորս արար, եւ զկառս նոցա այրեաց հրով։
10 Եւ դարձաւ Յեսու ի ժամանակին յայն-
միկ, եւ առ զԱսովր եւ զթագաւորն
նորա, եւ սպան զնա. զի Ասովր էր նախ
իշխան ամենայն թագաւորութեանցն այ-
11 նոցիկ. Եւ կոտորեցին զամենայն շնչա-
ւոր որ ի նմա սրով սուսերի, եւ սատա-
կեցին զամենեսին. եւ ոչ մնաց ի նմա
12 շնչաւոր. եւ զԱսովր այրեցին հրով։ Եւ
զամենայն քաղաքս թագաւորութեանցն
այնոցիկ եւ զթագաւորս նոցա առ Յեսու,
եւ կոտորեաց զնոսա սրով սուսերի եւ
սատակեաց զնոսա, զոր օրինակ հրա-
մայեաց նոցա Մովսէս ծառայ Տեառն։
13 Այլ զամենայն քաղաքս [10]հաստատեալս
ի նոցանէ" ոչ այրեաց Իսրայէլ, բայց միայն
14 զԱսովր զոր այրեաց Յեսու։ Եւ զամե-
նայն կապուտ [11]նորա եւ զանասուն առին
իւրեանց յաւարի որդիքն Իսրայէլի. բայց
[12]զնոսա զամենեսին" սատակեցին սրով
սուսերի մինչեւ կորուսին զնոսա, եւ
ոչ թողին ի նոցանէ եւ ոչ մի շնչա-
15 ւոր։ Զոր օրինակ հրամայեաց Տէր Մով-
սիսի ծառայի իւրում, եւ որպէս պատ-
ուիրեաց Մովսէս Յեսուայ՝ նոյնպէս ա-
րար Յեսու. եւ ոչ անց եւ ոչ զինչ յամե-
նայնէ զոր [13]պատուիրեաց նմա Մովսէս"։
16 Եւ առ Յեսու զամենայն երկիրն զայն,

---

[1]Եբր. քաղաքս [2]Այսինքն՝ զհարաւայինսն [3]Այսինքն, զստորոտսն [4]Եբր. նոցա [5]ՅԵբր. դ—լ—ւե [6]Եբր. կռուէր վասն [7]Եբր. Մադոնայ [8]Եբր. որ ի հիւսիսոյ ի լերինն, եւ ի դաշտին որ ի հարաւոյ Քեներեթայ, եւ ի հովտին եւ ի գաւառս Դովրայ յարեւմտից, (3) Ի Քանանացիս յարեւելից եւ յարեւմտից կողմանէ, եւ յԱմովրհացիս, [9]Եբր. ամենայն բանակ նոցա, ընդ նոսա,

[10]Եբր. որ կային ի վերայ հողաբլրոց՝ [11]Եբր. քաղաքացն այնոցիկ [12]Եբր. զամենայն մարդ [13]Եբր. պատուիրեալ էր Տէր Մովսիսի

զլեռնակողմն եւ զամենայն [1]երկիրն
Նագեբ՝՝, եւ զամենայն երկիրն Գոսոմ,
եւ [2]զդաշտայինն եւ զարեւմտեայն՝՝, եւ
զլեառնն Իսրայէլի եւ զհովիտ նորա [3]որ
17 առ լերամբն. ի լեռնէն Աքելայ եւ ցելսն
Սուրայ՝՝, մինչեւ ցԲաաղգադ, [4]եւ զդաշ-
տայինն՝՝ Լիբանանու առ ստորոտն Հեր-
մոնի, եւ զթագաւորս նոցա զամենեսին
18 առ եւ կոտորեաց։ Եւ աւուրս բազումս
արար Յեսու ընդ ամենայն թագաւորսն
19 ընդ այնոսիկ պատերազմ։ Եւ ոչ էր
քաղաք [5]զոր ոչ մատնեաց Տէր՝՝ որդւոցն
Իսրայէլի, բայց ի Խեւացւոցն որ բնակեալ
էր ի Գաբաւոն. զամենեսին առ պատե-
20 րազմաւ։ Զի ի Տեառնէ կարծրանային
սիրտք նոցա պատահել պատերազմաւ
Իսրայէլի զի սատակեսցին, եւ մի տացի
նոցա ողորմութիւն, այլ զի սատակես-
ցին որպէս խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի։
21 Եւ եկն Յեսու ի ժամանակին յայնմիկ
եւ սատակեաց զԵնակիմն [6]ի լեռնակողմն
Քեբրոնի եւ՝՝ Դաբիրայ, եւ յԱնովբայ եւ
յամենայն լեռնէն Իսրայէլի եւ յամենայն
լեռնէն Յուդայ, հանդերձ քաղաքօք նո-
22 ցա, եւ սատակեաց զնոսա Յեսու։ Եւ
ոչ մնաց յԵնակիմացն [7]յորդւոցն Իսրա-
յէլի, բայց միայն ի Գազա եւ ի Գէթ եւ
յԱսեդովթ մնացին։
23 Եւ առ Յեսու զամենայն երկիրն որ-
պէս պատուիրեաց Տէր Մովսէսի, եւ ետ
Յեսու ժառանգութիւն Իսրայէլի վիճա-
կաւ ըստ ցեղից նոցա. եւ դադարեաց
երկիրն պատերազմէ։

ԳԼ. ԺԲ

1 Եւ այս են թագաւորք զորս [8]կոտորեաց
Մովսէս եւ՝՝ որդիքն Իսրայէլի, եւ ժա-
ռանգեցին զերկիրն նոցա յայնկոյս Յոր-
դանանու [9]յարեւմտից կողմանէ, ի ձո-
րոյն Առնովնայ մինչեւ ցլեառնն Հեր-
մոն, եւ զամենայն [10]զԱրաբա յարեւելից
2 կողմանէ. ԶՍեհոն թագաւոր Ամովրհաց-
ւոց որ բնակեալ էր յԵսեբոն, եւ տիրէր
յԱրոյերայ [11]մինչեւ ցձորն Առնովնայ յե-
զերբ ձորոյն, եւ զկէսն՝՝ Գաղաադու
մինչեւ ցհեղեղատն Յաբոկայ, [12]սահ-
3 մանք որդւոցն Ամոնայ, Եւ Արաբայ մին-
չեւ ցծովն Քեններեթայ ընդ արեւելս
[13]Արաբայ ցծովն,՝՝ մինչեւ ցծովն Աղի,
յարեւելից ընդ ճանապարհն Ասիմովթայ,
եւ ի Թեմանայ որ է [14]ընդ Ասեդովթաւ
4 ի Փասգայնէ՝՝։ Եւ սահմանք Ովգայ ար-
քայի Բասանու որ մնացեալ էր ի սկա-
յից անտի, որ բնակեալ էր յԱստարովթ
5 եւ յԵդրային. [15]Իշխան ի լեռնէն Հեր-
մոնի եւ ի Սելքայ, եւ զամենայն Բա-
սան՝՝ մինչեւ ի սահմանս Գեսուրայ եւ
[16]զՄաքաթի եւ զկէս՝՝ Գաղաադու սահ-
մանացն Սեհոնի արքայի Եսեբոնայ։
6 Մովսէս ծառայ Տեառն եւ որդիքն Իս-
րայէլի հարին զնոսա, եւ ետ զայն Մով-
սէս ծառայ Տեառն ի ժառանգութիւն
Ռուբենի եւ Գադայ, եւ կիսոյ ցեղին
Մանասէի։
7 Եւ այս են թագաւորք [17]Ամովրհաց-
ւոց զորս կոտորեաց Յեսու եւ որդիքն
Իսրայէլի յայնկոյս Յորդանանու [18]առ
ծովեզերբն Գաղաադու՝՝ ի դաշտին Լի-
բանանու մինչեւ ցլեառն [19]Աղովկայ յելն
Սէիրայ՝՝. եւ ետ զնա Յեսու ցեղիցն Իս-
րայէլի ի ժառանգութիւն ըստ վիճակաց
8 նոցա. Ի լերինն եւ [20]ի դաշտի, եւ յԱրա-
բա՝՝ եւ յԱսեդովթ, եւ յանապատին եւ
[21]ի Նագեբ, զՔետացին եւ զԱմովրհացին
եւ զՔանանացին եւ զՓերեզացին եւ
զԽեւացին եւ [22]զԳերգեսացին եւ՝՝ զՅե-
9 բուսացին. Զթագաւորն Երիքովայ զմի,
զթագաւորն Գայեայ որ մերձ ի Բեթէլ
10 զմի, Զթագաւորն Երուսաղեմի զմի,
11 զթագաւորն Քեբրոնի զմի, Զթագաւորն
Յերիմութայ զմի, զթագաւորն Լաքի-
12 սայ զմի, Զթագաւորն Եգղոնի զմի,
13 զթագաւորն Գազերայ զմի, Զթագաւորն
Դաբիրայ զմի, զթագաւորն Գադերայ
14 զմի, Զթագաւորն Հերմեայ զմի, զթա-
15 գաւորն [23]Արերայ զմի, Զթագաւորն
Լոմնայ զմի, զթագաւորն Ոդողոմայ զմի,
16 Զթագաւորն Մակեդայ զմի, (17) [24]Զթա-
գաւորն Թափուայ զմի, զթագաւորն
18 Ոփերայ զմի, Զթագաւորն Ափեկայ զմի,

---

[1]Եբր. հարաւակողմն [2]Եբր. զհովիտն եւ զդաշտն
[3]Եբր. (17) Ի լեռնէն Բաղակայ որ ելանէ ի Սէիր
[4]Եբր. ի հովտին [5]Եբր. որ արար խաղաղու-
թիւն ընդ [6]Եբր. ի լեռնէն, ի Քեբրոնէ, ի [7]Եբր.
յերկրի անդ որդւոցն [8]Եբր. կոտորեցին [9]Եբր.
յարեւելից [10]Այլք՝ զդաշտն [11]Եբր. որ
էր առ եզերբ ձորոյն Առնովնայ եւ միջոցի ձորոյն,
և կիսոյ [12]Եբր. որ ի սահմանս

[13]Եբր. եւ ցծովն Արաբայ [14]Եբր. առ ստորոտով
Ասեդովթփասգայ [15]Եբր. (5) Եւ տիրէր ի
լերինն Հերմոնի եւ ի Սեղքա և յամենայն Բասան
[16]Եբր. Մաքաթայ և կիսոյ [17]Եբր. երկրին [18]Եբր.
յարեւմուտս կոյս, ի Բաաղգադայ [19]Եբր. Քա-
ղակայ որ ելանէ ի Սէիր [20]Եբր. ի հովտին եւ
ի դաշտին [21]Այլքն՝ ի հարաւ [22]Յեբր. պակասէ
[23]Եբր. Արադայ [24]Եբր. Զթագաւորն Բեթելայ
զմի, զթագաւորն

19 Զթագաւորն [1]Ասովրայ զմի, (20) Զթա-
գաւորն Սամրոնայ [2]զմի, զթագաւորն՝՝
Մառոնայ զմի, զթագաւորն Աքսա-
21 փայ զմի, Զթագաւորն Թանաքայ զմի,
22 զթագաւորն Մակեդդովայ զմի, Զթա-
գաւորն Կեդեսայ զմի, զթագաւորն Յեկ-
23 նոմայ զՔերմելայն զմի, Զթագաւորն
Դովրայ զՆափեդովրայ զմի, զթագա-
24 ւորն Գելիմայ զԳելգելայն զմի, Զթա-
գաւորն Թերսայ զմի։ Ամենեքեան սո-
քա թագաւորք [3]քսանեւմին։

ԳԼ. ԺԳ

1 Եւ Յեսու ծերացեալ եւ անցեալ զա-
ւուրբք. եւ ասէ Տէր ցՅեսու, Դու ծե-
րացեալ ես եւ անցեալ զաւուրբք, եւ
երկիր բազում մնացեալ է ի ժառանգու-
2 թենէ։ Եւ այս է երկիրն մնացեալ. ա-
3 մենայն սահմանք Փղշտացւոց, [4]Գեսու-
րի եւ Քանանացին, Յանչինէ՝՝ անա-
պատէ Եգիպտոսի՝ մինչեւ ի սահմանս
Ակկարոնի, [5]ընդ աջմէ՝՝ Քանանացւոյն
համարի, հնգից [6]թագաւորացն Փղշտաց-
ւոց, Գազացւոյն եւ Ազովտացւոյն եւ
Ասկաղոնացւոյն եւ Գեթացւոյն եւ Ակ-
4 կարոնացւոյն, եւ [7]Խեւացւոյն. Ի Թե-
մանայ՝՝ ամենայն երկիրն Քանանացւոյն,
[8]Գազա եւ Սիդոնացիք՝՝ մինչեւ ցՅա-
փեկա՝ մինչեւ ցսահմանս Ամովրհաց-
5 ւոյն. Եւ [9]զամենայն երկիրն Աբարայ ի
Փղշտացւոց՝ եւ զամենայն Լիբանան
յելից արեւու, ի Գաղգաղայ՝՝ առ ո-
տամբ լերինն Հերմոնի մինչեւ ցմուտս
6 Եմաթայ. Ամենայն որ բնակեալ իցէ
զլեռնակողմն, ՚ի Լիբանանէ մինչեւ ի
Մասերեփովթմայիմ, զամենայն Սիդո-
նացիս, ես սատակեցից զնոսա յերեսաց
որդւոցն Իսրայելի. բայց դու բաշխեա
զնոսա ի ժառանգութիւն Իսրայելի, որ-
պէս պատուիրեցի քեզ։
7 Եւ արդ բաժանեա զերկիրս զայս ի
ժառանգութիւն ինն ցեղիցն եւ կիսոյ
ցեղին Մանասէի, [10]ի Յորդանանէ մին-
չեւ ցծովն մեծ ընդ կողմն արեւմտից՝
տացես զնա. եւ ծովն մեծ սահմանես-
8 ցէ։ Եւ երկու ցեղիցն եւ կիսոյ ցեղին
Մանասէի՝ որ են ընդ Ռուբենի եւ ընդ
Գադայ որ՝՝ առին զժառանգութիւն իւր-
եանց զոր [11]ետ Մովսէս յայնկոյս Յոր-
դանանու յարեւելից. [12]բաժանեաց նոցա
9 Մովսէս ծառայ Տեառն, ՅԱրոյերայ որ
է առ եզերբ հեղեղատին Առնովնայ, եւ
զքաղաքն որ է ի մէջ ձորոյն, եւ զա-
մենայն Միսովր, ի Մեդաբայ մինչեւ
10 ցԴեբոն, Զամենայն քաղաքս Սեհոնի
արքայի Ամովրհացւոց որ թագաւորեաց
յԵսեբոն, մինչեւ ցսահմանս որդւոցն Ա-
11 մոնայ, Եւ [13]զԳաղաադայինն եւ զսահ-
մանս Գեսուրայ եւ զՄաքաթեայ, եւ
զամենայն լեառնն Հերմոն, եւ զամե-
նայն Բասանաստան մինչեւ ցՍելքա.
12 Զամենայն թագաւորութիւնն Ովգայ ի
Բասան, որ թագաւորեաց յԱստարովթ
եւ յԵդրային. նա մնաց ի մնացորդաց
սկայիցն. եւ եհար զնա Մովսէս եւ սա-
13 տակեաց։ Եւ ոչ սատակեցին որդիքն
Իսրայելի զԳեսուրի եւ զՄաքաթի [2]եւ
զՔանանացին՝՝. եւ բնակէր [14]թագաւորն
Գեսուրայ եւ Մաքաթեայ՝՝ ի մէջ որդ-
14 ւոցն Իսրայելի մինչեւ ցայսօր։ Բայց
ցեղին Ղեւեայ ոչ տուաւ [15]բաժին եւ
ժառանգութիւն. զի Տէր Աստուած Իս-
րայելի է նոցա ժառանգութիւն որպէս
ասաց նոցա Տէր։ Եւ այս են բաժինք
զոր բաժանեաց Մովսէս որդւոցն Իս-
րայելի, յԱրաբովթ Մովաբ յայնկոյս Յոր-
դանանու յանդիման Երիքովի՚՝
15 Եւ ետ Մովսէս ըստ ցեղին Ռուբենի
16 եւ ըստ տոհմից նոցա. Եւ եղեն սահ-
մանք նոցա յԱրոյերայ որ կայ յանդիման
ձորոյն Առնովնայ, եւ [16]քաղաքն ի ձորն
17 Առնովնայ, եւ ամենայն Միսովր. Եւ
Մեդաբայ մինչեւ յԵսեբոն, եւ զամե-
նայն քաղաքս նոցա որ են ի Միսովր՝՝ եւ
զԴեբոն, եւ զԲամովթբահաղ. եւ զտունս
18 Բաաղմովթայ, Եւ զՅասսա եւ զԿեդմովթ
19 եւ զՄեփայաթ Եւ զԿարիաթեմ եւ զՍե-
բամա եւ զՍարեթ եւ զՍիովր ի լերինն
20 Ենակայ, Եւ զԲեթփոգովր եւ զԱսե-

[1]Եբր. Ղասսարոնայ զմի, (19) Զթագաւորն Մադոնայ զմի, զթագաւորն Ասովրայ [2]Եբր. [illegible] [3]Եբր. երեսուն եւ մի [4]Եբր. եւ ամենայն Գեսուր. (3) ի Սիովրայ [5]Եբր. ի հիւսիսոյ որ [6]Եբր. նախարարացն [7]Եբր. Աւացւոցն (4) Ի հարաւոյ [8]Եբր. եւ Մէարա որ է Սիդոնացւոց [9]Եբր. երկիրն Գեբաղացւոց եւ ամենայն Լիբանան յարեւելից, ի Բաաղգադայ [10]Եբր. (8) Ընդ նմա Ռուբինեանք եւ Գադեանք

[11]Եբր. ետ նոցա [12]Եբր. որպէս բաժանեաց [13]Եբր. զԳաղաադ [14]Եբր. Գեսուրացին եւ Մաքաթացին [15]Եբր. բաժին. պատարագք Տեառն Աստուծոյ Իսրայելի, այն է ժառանգութիւն նորա, որպէս ասացն նմա։ [16]Եբր. քաղաքն որ ի ձորն, եւ ամենայն դաշտն յանդիման Մեդաբայ. (17) ԶԵսեբոն եւ զամենայն քաղաքս նորա որ են ի դաշտին,

21 զովթփասգա և զԲեթսիմովթ, Եւ զա-
մենայն քաղաքս [1]Միսովրայ, և զամե-
նայն թագաւորութիւնն Սեհոնի արքա-
յի Ամովրհացւոց, որ թագաւորեաց յԵ-
սեբոն, զոր եհար Մովսէս՝ զնա և զիշ-
խանս Մադիամու, զԵւի և զՌոկոմ և
զՍուր և զՈւր և զՌոբէ, [2]և զիշ-
խանս Պարսպիմայն" զբնակեալս յերկ-
22 րին: Եւ զԲաղաամ Բէովրեան զհար-
ցուկն կոտորեցին որդիքն Իսրայէլի սրով
23 [3]ի միում վայրկենի": Եւ եղեն սահմանքն
[4]Ռուբենի, Յորդանան սահման": Այս է
ժառանգութիւն որդւոցն Ռուբենի ըստ
տոհմից իւրեանց, քաղաքք և ա-
ւանք նոցա:
24 Եւ ետ Մովսէս որդւոցն Գադայ ըստ
25 տոհմից իւրեանց: Եւ եղեն նոցա սահ-
մանք Յազերայ, և ամենայն քաղաքք
Գաղաադու. և կէս երկրի որդւոցն Ա-
մոնայ մինչև յԱրոյեր որ է յանդիման
26 Ռաբաթայ, Եւ յԵսեբոնայ մինչև յՀա-
մովթ՝ առ Մասփայիւ, և Բոտանիմ և
Մանայեմ մինչև ցսահմանս Դաբիրայ,
27 Եւ յԵմակն, Բեթարամ և Բեթնամրա
և Սովքով և Սափոն. [5]և զայլ ևս թա-
գաւորութիւնն" Սեհոնի արքայի Եսե-
բոնայ, Յորդանան [6]սահման է", մինչ
ցեզր ծովուն Քեններեթայ, յայնկոյս Յոր-
28 դանանու յարևելից: Այս է ժառանգու-
թիւն որդւոցն Գադայ ըստ տոհմից իւր-
եանց, [7]ըստ քաղաքաց նոցա՝ և ագա-
րակք նոցին":
29 Եւ ետ Մովսէս կիսոյ ցեղին Մանա-
սէի. և եղև կիսոյ ցեղի որդւոցն Մա-
30 նասէի ըստ տոհմից իւրեանց: Եւ եղեն
սահմանք նոցա ի Մանայեմայ, ամենայն
Բասան, և ամենայն թագաւորութիւնն
Ովգայ արքայի Բասանու, և ամենայն
աւանք Յայիրայ, որ են ի Բասանաս-
31 տանի, վաթսուն քաղաք. Եւ կէս Գա-
ղաադու, և Աստարովթ և Եդրայն,
քաղաքք թագաւորութեանն Ովգայ ի
Բասանաստանի, տուան որդւոցն Մա-
քիրայ որդւոյ Մանասէի, կիսոյ որդւոցն
Մանասէի ըստ տոհմից իւրեանց:
32 Այս են զորս ժառանգեցոյց Մովսէս
յայնկոյս Յորդանանու [8]յԱրաբովթ Մովաբ"
յայնմ կողմանէ Յորդանանու հանդէպ
33 Երիքովի յարևելից: Եւ ցեղին Ղևեայ ոչ
ետ Մովսէս ժառանգութիւն. զի Տէր Ա-
ստուած Իսրայէլի ինքնին է ժառանգու-
թիւն նոցա, որպէս խօսեցաւ ընդ նոսա:

ԳԼ. ԺԴ

1 Եւ [9]այս են որ ժառանգեցուցին որդ-
ւոցն" Իսրայէլի յերկրին Քանանացւոց,
որոց ժառանգեցուցին Եղիազար քահա-
նայ և Յեսու Նաւեան և իշխանք նա-
հապետութեանն ցեղից որդւոցն Իսրա-
2 յէլի: Եւ վիճակօք ժառանգեցուցին, զոր
օրինակ պատուիրեաց Տէր ի ձեռն [10]Յե-
սուայ, ինննեցունց ցեղիցն և կիսոյ ցե-
3 ղին: Քանզի ետ Մովսէս ժառանգու-
թիւն երկուց ցեղիցն և կիսոյ ցեղին
յայնկոյս Յորդանանու, և Ղևտացւոցն
4 ոչ ետ ժառանգութիւն ի մէջ նոցա: Զի
էին որդիքն Յովսեփու երկու ցեղք,
Մանասէ և Եփրեմ. և ոչ տուաւ բա-
ժին յերկրին Ղևտացւոցն, այլ՝ քաղաքք
բնակելոյ, և [11]պատուցեալս ըստ նոցին՝
5 խաշանց [12]նոցա: Զոր օրինակ պատուի-
րեաց Տէր Մովսիսի, նոյնպէս արարին
որդիքն Իսրայէլի, և բաժանեցին զերկիրն:
6 Եւ մատեան որդիքն Յուդայ առ Յե-
սու ի Գաղգաղա, և ասէ ցնա Քաղէբ
Յեփոնեայ Կենեզեան, Դու ինքնին գի-
տես զբանն զոր խօսեցաւ Տէր ընդ Մով-
սիսի առն Աստուծոյ վասն իմ և վասն
7 քո ի Կադէսբառնեա: [13]Զի քառասնամեայ
էի ես, յորժամ առաքեաց զիս Մովսէս
ծառայ Տեառն ի Կադէսբառնեայ լրտե-
սել զերկիրն, և [14]բերաք նմա գրոյց ըստ
8 մտաց [15]նորա. Բայց եղբարքն իմ որ ե-
լին ընդ իս՝ թիւրեցին զմիտս ժողովրդ-
եանն. բայց ես յաւելայ երթալ զհետ
9 Տեառն Աստուծոյ իմոյ: Եւ երդուաւ
Մովսէս յաւուր յայնմիկ և ասէ, Եր-
կիրն յոր հասեր՝ քեզ լիցի ի ժառան-
գութիւն և որդւոց քոց յաւիտեան. զի
յաւելեր երթալ զհետ Տեառն Աստուծոյ
10 իմոյ: Եւ արդ [16]կեցուցանէր զիս Տէր, որ-
պէս ասաց, այս ամ քառասներորդ հինգե-
րորդ է յորմէ հետէ խօսեցաւ Տէր զբանս
զայս ընդ Մովսիսի. և շրջեցաւ Իսրայէլ
յանապատին. և արդ աւասիկ եմ ես

[1] Այլքն՝ դաշտին [2] Ոմն. զնախարարս Սեհոնի. [3] Ոմն. ընդ սպանեալս նոցա [4] Ոմն. որդւոցն Ռուբենի Յորդանան և սահմանն [5] Ոմն. մնացորդ թագաւորութեանն [6] Ոմն. և սահմանն [7] Ոմն. քաղաքք և աւանք նոցա [8] Ոմն. ի դաշտն Մովաբու

[9] Ոմն. այսոքիկ են զորս ժառանգեցին որդիքն [10] Ոմն. Մովսիսի [11] Այլքն՝ արուարձանք [12] Ոմն. և ստացուածոց նոցա [13] Ոմն. գոլով [14] Ոմն. բերի [15] Ոմն. իմոց [16] Ոմն. առաջ կեցոյց

11 այսօր՝ ամաց ութսուն եւ հնգից. Եւ կա-
րող եմ այսօր, որպէս յորժամ առաք-
եաց զիս Մովսէս, նոյնպէս եւ արդ կա-
րող եմ մտանել եւ ելանել ի պատերազմ։
12 Եւ այժմ խնդրեմ ի քէն զլեառնն զայն,
որպէս ասաց Տէր յաւուր յայնմիկ. զի
դու ինքնին լուար զբանս զայս յաւուր
յայնմիկ. եւ արդ աւանիկ Ենակիմք են
անդ, եւ քաղաքք ամուրք եւ մեծա-
մեծք. [1]արդ եթէ Տէր ընդ իս է,՝՝ սա-
տակեցից զնոսա, որպէս ասաց ինձ Տէր։
13 Եւ օրհնեաց զնա Յեսու, եւ ետ զՔեբրոն
Քաղեբայ որդւոյ Յեփոնեայ [2]Կենեզացւոյ
14 ի ժառանգութիւն։ Վասն այնորիկ եղեւ
Քեբրոն Քաղեբայ որդւոյ Յեփոնեայ Կենե-
զացւոյ ի ժառանգութիւն[3]. վասն եր-
թալոյ նորա զհետ հրամանի Տեառն Ա-
15 ստուծոյ Իսրայելի։ Եւ անուն Քեբրոնի
էր յառաջ քաղաք [4]Արբոկ. նա էր [5]մայր
քաղաքաց Ենակիմացն՝՝։
Եւ երկիրն դադարեաց ի պատերազմէ։

ԳԼ. ԺԵ

1 Եւ եղեն սահմանք ցեղի որդւոցն Յու-
դայ ըստ տոհմից իւրեանց՝ ի սահմանացն
Եդովմայեցւոց, [6]ի Սինն անապատէ մին-
չեւ ի Կադէս, ընդ հարաւակողմն՝՝։
2 Եւ եղեն նոցա սահմանք ի հարաւոյ
մինչեւ յեզր ծովուն Աղւոյ, ի սարոյն
3 որ իջանէ ի հարաւակողմն, Եւ անցա-
նեն [7]մինչեւ ի զառ ի վերին Ակրաբիմայ,
եւ պատեն [8]զՍինաքաւ, եւ վերանան ի
հարաւոյ զԿադէսբառնեաւ, եւ ելանեն [9]ի
Հասոռն, եւ ձգին առ Ադդարաւ, եւ պա-
4 տեն առ [10]արեւմտիւքն Կադեսայ՝՝, Եւ
երթան զԱսեմոնա, եւ հանեն մինչեւ
ցձորն Եգիպտացւոց. եւ եղիցին նոքա
ելք սահմանացն ընդ ծովակողմն. [11]այս
են նոցա՝՝ սահմանք ի հարաւոյ։
5 Եւ սահմանք յարեւելից [2]ամենայն ծովն
Աղի մինչեւ ցեզրն Յորդանանու։
Եւ սահմանք նոցա ընդ հիւսիսի ի սա-
6 րոյ ծովուն եւ յեզերէ Յորդանանու, Հա-
սանեն սահմանքն ի Բեթագղա, եւ շրջին
առ հիւսիսով զԲեթարաբա, եւ մերձա-
նան սահմանքն առ Բեոնն վիմաւ որդ-
7 ւոցն Ռուբենի. Եւ ելանեն սահմանքն
[12]առ չորրորդ մասամբ՝՝ ի ձորոյն Աքովրայ,
եւ ընդ [13]հարաւակողմն, եւ իջանեն ի
Գաղգաղ, որ է հանդէպ [14]մտիցն Ե-
դոմմիմայ, եւ՝՝ ընդ հարաւակողմն. եւ
հասանէ սահմանն ի ջուր Արեգ աղբեր,
եւ եղիցին նոցա ելք աղբերն Ռովգե-
8 ղեայ. Եւ ելանեն սահմանքն ի ձոր
որդւոցն Ենովմայ ի թիկանց Յեբուսայ
ի հարաւոյ, այն է Երուսաղէմ. եւ հա-
սանեն սահմանքն ի գլուխ լերինն որ է
հանդէպ ձորոյն Ենովմայ ի ծովակողմն
կողմանէ որ է յեզեր երկրին Ռափայնոց
9 ընդ հիւսիսի. Եւ հանէ սահմանն ի գլխոյ
լերինն յաղբեւր ջրոյն Նափթաթայ, եւ
[15]հասանէ լեառնն Եփրեմի ի Գայի՝՝. եւ
հանէ սահմանն ի Բաաղ, այն է քաղաք
10 Յարիմայ. Եւ պատի սահմանն ի Բաա-
ղայ ընդ ծովակողմն [2]Ասարէս ի լեառնն
Սէիր, եւ պատի զթիկամբք քաղաքին
Յարիմայ ի հիւսիսոյ, այն է Քասղոն.
եւ [16]իջուցանէ յԱրեգ քաղաք, եւ ան-
11 ցանէ ի հարաւ՝՝. Եւ հասանէ սահմանն
ի թիկանց Ակկարոնի ընդ հիւսիսի. եւ
հանեն սահմանքն ի Սաքքայոնայ, եւ
անցանեն առ լերամբ երկրին Բաաղայ,
եւ հասանեն յԱբնեղ. եւ եղիցին ելք
սահմանաց նոցա ընդ ծովակողմն։
12 Եւ զսահման նոցա [17]ի ծովէ՝ ծովն մեծ
զատանէ։ Այսեն սահմանք որդւոցն Յու-
դայ շուրջանակի՝ ըստ տոհմից իւրեանց։
13 Եւ Քաղեբայ որդւոյ Յեփոնեայ ետ
բաժին ի մէջ որդւոցն Յուդայ հրամա-
նաւ [18]Աստուծոյ. եւ ետ նմա Յեսու
զքաղաքն [19]Արբոկ, զմայր քաղաքացն՝՝
14 Ենակայ, այն է Քեբրոն։ Եւ [20]սատակ-
եաց զնոսա անտի Քաղէբ [2]որդի Յեփոն-
եայ՝՝, զերիս որդիսն Ենակայ՝ զՍուսի,
զԹողմայի եւ զԱքիման, զծնունդս Ե-
15 նակայ։ Եւ ել անտի Քաղէբ ի վերայ
բնակչացն Դաբիրայ. եւ անուն Դաբի-
րայ էր յառաջագոյն քաղաք Նամակաց։
16 Եւ ասէ Քաղէբ, Որ ոք առցէ զքաղաքն
Նամակաց, եւ տիրեսցէ նմա, տաց նմա
17 զԱքսա դուստր իմ կնութեան։ Եւ առ
զնա Գոթոնիէլ որդի Կենեզի, [21]եղբայր
Քաղեբայ կրտսեր՝՝. եւ ետ նմա զԱքսա
18 դուստր իւր կնութեան։ Եւ եղեւ յեր-

[1]Օրին. եթէ ընդ իս իցէ Տէր, և [2]Օրին. [illegible] [3]Օրին. [illegible], մինչեւ ցայսօր [4]Օրին. Արբոկայ [5]Օրին. այր մեծ յԵնակիմն [6]Օրին. մինչեւ յանապատն ի Սին ի հարաւ կոյս, ի ծագաց հարաւոյ [7]Օրին. ի հարաւոյ [8]Օրին. զՍինաւ [9]Օրին. յԱսարոն [10]Օրին. Կարկային [11]Օրին. այս եղիցին ձեզ

[12]Օրին. ի Դաբիր [13]Օրին. հիւսիսակողմն [14]Օրին. զառ ի վերին Ադոմմիմայ որ [15]Օրին. ելանէ ի քաղաքս լերինն Եփրոնայ [16]Օրին. իջանէ յԱրեգ քաղաք (ի Բեթսամիւս). և անցանէ ի Թամնա [17]Այսինքն՝ յարեւմտից [18]Օրին. Տեառն առ Յեսու [19]Օրին. Արբոկայ, հօր [20]Օրին. փախեաց [21]Օրին. եղբօր Քաղեբայ

Թալն նորա [1]խորհեցաւ ընդ նա եւ ասէ,
խնդրեցից ի հօրէ իմմէ ագարակ. եւ
աղաղակեաց" յիշոյ անտի։ Եւ ասէ ցնա
19 Քաղէբ, Զի՞ է քեզ։ Եւ ասէ ցնա, Տուր
ինձ օրհնութիւն. զի յերկիր [2]Նագեբ
ետուր զիս. տուր ինձ [3]Գոլլաթմայիմ։
Եւ ետ նմա Քաղէբ [4]զԳոլլաթն վերին
եւ [4]զԳոլլաթն ներքին։
20 Այս է ժառանգութիւն ցեղի որդւոցն
Յուդայ՝ ըստ տոհմից իւրեանց։
21 Եւ եղեն [5]նոցա քաղաքք. քաղաք
առաջին ցեղի որդւոցն Յուդայ ի սահ-
մանս Եդոմայ յանապատին," Կաբսէէլ
22 եւ Եդրային եւ Յագուր Եւ Կինա եւ
23 Դեմնա եւ Ադադա Եւ Կադէս եւ [6]Իթ-
24 նանզիփ Եւ Տէղէմ եւ Բաաղովթ (25) Եւ
26 [7]քաղաքն Ասերոն, այն է Ասովր", Ամամ
27 եւ Սամա եւ Մովլադա Եւ Ասէրգադդա
28 եւ [8]Բեթփաղէթ Եւ Ասարսուղա եւ [9]Բեր-
սաբէէ, եւ աւանք նոցա եւ ագարակք
29 նոցա." Բաաղա եւ Աւիմ եւ Ասեմ (30) Եւ
31 Եղթովլադ եւ Քուղ եւ Երմա Եւ Սի-
32 կելէկ եւ Մադեբենա եւ Սանսաննա Եւ
Ղաբովթ եւ Սէղէմի եւ [10]Ռեմոն. քա-
ղաքք քսանեւինն եւ աւանք նոցա։
33 Ի դաշտավայրս՝ Եսթաւուղ եւ Սարաա
34 եւ Ասնա, [11]եւ Ռամոն" Եւ Զանով եւ
35 [12]Ադիաթեմ եւ Ենայիմ Եւ Յերիմութ
եւ Ոդողամ եւ [11]Ներմա եւ" Սոքով եւ
36 Ազեկա Եւ Սադարիմ եւ [13]Գադերա, եւ
ագարակք նոցա. քաղաքք չորեքտա-
37 սանք եւ աւանք նոցա։ Սենան եւ Ա-
38 դասա եւ Մակդաղգադ Եւ Դաղաան,
39 եւ Մասփա եւ Յեքթայեղ Եւ Ղաքիս
40 եւ Բազկաթ եւ Ագգոմ Եւ Քաբբա եւ
41 Լամաս եւ Քաաղոմ Եւ Գադերովթ եւ
Բեթդագոն եւ Նովմա եւ Մակեդդա.
քաղաքք վեշտասան եւ աւանք նոցա։
42 Ղեբնա եւ [14]Աթեր (43) Եւ Յեփթա եւ Ա-
44 սեննա եւ Նեսիբ Եւ Կէիլա եւ Աքեզիբ
եւ Մարեսա [11]եւ Եղէմովմ". քաղաքք ինն
45 եւ աւանք նոցա։ Ակկարոն եւ աւանք
46 նորա եւ ագարակք նորա. Եւ յԱկկա-
րոնէ [15]յէմէն, ամենայն արուարձանք
Ասերովդայ, եւ աւանք նոցա եւ ագա-
47 րակք նոցա։ [16]Գազա եւ աւանք նորա
եւ ագարակք նորա՝ մինչեւ ցհեղեղատն
Եգիպտոսի, եւ ծովն մեծ զատուցանէ։
48 Եւ ի լեռնավայրսն՝ Սամիր եւ Յեթեր
49 եւ Սովքով Եւ Դեննա [11]եւ լեառնն Ա-
հերմոն," եւ քաղաքն [17]Նամակաց՝ այն
50 է Դաբիր, Եւ Անովբ եւ Եսթեմով
51 եւ Անիմ Եւ Գոսոմ եւ Քիղուոն եւ
Գեղոն. քաղաքք մետասան եւ աւանք
52 նոցա։ Երեբ եւ [18]Եսան եւ Երումա"
53 Եւ Յանում եւ Բեթթափուէ եւ Ափա-
54 կա Եւ Քամմատա եւ քաղաքն Ար-
բոկ՝ այն է Քեբրոն, եւ Սիովր. քա-
55 ղաքք ինն եւ աւանք նոցա։ Մաւոն եւ
56 Քերմէլ եւ Զիփ եւ Յետաա Եւ Յեզ-
57 րայէլ եւ Յեկտամ եւ Զանովա, Եկիմ եւ
Գաբաա եւ Թամնա. քաղաքք [19]ինն եւ
58 աւանք նոցա։ Ալուլ եւ Բեթսուր եւ
59 Գեդովր Եւ Մարովթ եւ Բեթանովթ
եւ Եղթեկեն. քաղաքք վեց եւ աւանք նո-
նոցա։ [11]Թեկով եւ Եփրաթա՝ այն է Բեթ-
ղահէմ, եւ Բագովր եւ Ետամ եւ Կու-
ղոմն եւ Տատամի եւ Սովրէս եւ Կա-
րեմ եւ Գաղղիմ եւ Բեթեր եւ Մանո-
քով. քաղաքք մետասան եւ աւանք
60 նոցա"։ Կարիաթբաաղ, նա է քաղաք
Յարիմայ եւ Ռաբա. քաղաքք երկու
եւ աւանք նոցա [20]եւ ագարակք իւրեանց։
61 Բէթբարգիս եւ" Բէթարաբա եւ Մա-
62 դոմն եւ Սովքովա Եւ Նեբսան, եւ քա-
ղաքք աղտիցն, եւ Ենգադի. քաղաքք
[21]եւթն եւ աւանք նոցա։
63 Եւ Յեբուսացին բնակեալ էր յԵրու-
սաղէմ, եւ ոչ կարացին որդիքն Յուդայ
[22]մարտնչել ընդ նոսա". եւ բնակեցան
Յեբուսացիքն ընդ որդիսն Յուդայ յԵրու-
սաղէմ մինչեւ ցայսօր։

ԳԼ. ԺԶ

1 Եւ եղեն որդւոցն Յովսեփայ սահմանք,
ի Յորդանանէ հանդէպ Երիքովի, ի ջրոյ
անտի [11]որ հանդէպ" Երիքովի յարեւե-
լից, ընդ անապատն եւ ամբառնան յԵ-
րիքովէ ի լեռնակողմ [23]անապատին ի

[1] Եբր. Հուանեցոյց զնա խնդրել ի հօրէ իւրմէ ագարակ, եւ էջ [2] Այսինքն՝ հարաւոյ [3] Այսինքն՝ զղբօսանս, կամ, զակունս ջուրց (Տես Դատ. Ա. 15) [4] Այսինքն՝ զակունս [5] Եբր. քաղաքք ի ծայրաւորոյ անտի ցեղի որդւոցն Յուդայ առ սահմանօքն Եդովմայ ի հարաւոյ. [6] Եբր. Հասովր եւ Իթնան, (24) Զիփ [7] Եբր. (25) Հասովր Ադադայ եւ Քերիովթ, Հեսրոն, այն է Հասովր։ [8] Եբր. Եսեմոն և Բեթփաղէթ [9] Այսինքն՝ Ջրհոր երդման, (Տես Ծննդ. ԻԱ. 31) և Բաղիովթիա, Եւ [10] Եբր. Ային եւ Ռեմոն [11] Յեբր. պակասէ [12] Եբր. Ենգանիմ եւ Թափուա [13] Եբր. Ատիթայիմ եւ Գադերա (եւ Գադերովթայիմ) [14] Եբր. Աթեր և Ասան

[15] Եբր. մինչեւ ի ծովն [16] Եբր. Ասեդովթ եւ աւանք նորա եւ ագարակք նորա, Գազա [17] Եբր. Սաննա [18] Եբր. Դումա եւ Եսան [19] Եբր. տասն [20] Եբր. Յանապատին՝ [21] Եբր. վեց [22] Եբր. վանել զնոսա [23] Եբր. ի Բեթէլ

2 Բեթէլղուզ". Եւ ելանեն [1]ի Բեթէլ-
ղուզայ եւ անցանեն առ սահմանօքն
3 Արքիատարովթայ, Եւ ելանեն ընդ ծո-
վակողմն ի սահմանն Յեփաղթեայ, մին-
չեւ ցսահմանս Բեթորոնայ ներքնոյ եւ
մինչեւ ցԳազեր, եւ եղիցին ելք նոցա
4 ընդ ծովակողմն։ Եւ ժառանգեցին որ-
դիքն Յովսեփայ՝ Եփրեմ եւ Մանասէ։
5 Եւ եղեն սահմանք որդւոցն Եփրեմայ
ըստ տոհմից իւրեանց. եւ եղեն սահ-
մանք ժառանգութեան նոցա յարեւելից՝
Ատարովթ Ադար, մինչեւ ցԲեթորոնն
6 վերին [2]եւ ցԳազեր". Եւ անցանեն սահ-
մանքն ընդ ծովակողմն ի Մաքովթ ի
հիւսիսոյ, եւ պատեցի սահմանն ընդ
արեւելս ի Թենաթսելով, եւ ան-
7 ցանէ յարեւելից առ Յանովա, Եւ իջցէ
Յանովայ յԱտարովթ եւ ի Նաարաթա,
եւ [2]աւանք նոցա" անցցեն առ Երիքով
8 եւ հանցեն ի Յորդանան. Եւ ի Թափու-
եայ անցցեն սահմանքն ի ծովակողմն՝
ի հեղեղատն Կանայ, եւ եղիցին ելք նո-
րա ի ծովակողմն։ Այս է ժառանգութիւն
ցեղի որդւոցն Եփրեմի ըստ տոհմից իւր-
9 եանց. Եւ քաղաքքն զատուցեալք որդ-
ւոցն Եփրեմի ի մէջ ժառանգութեան
որդւոցն Մանասէի, ամենայն քաղաքք
եւ աւանք նոցա։
10 Եւ ոչ կորոյս Եփրեմ զՔանանացին
բնակեալ ի Գազեր, եւ բնակէր Քանա-
նացին ի մէջ Եփրեմայ մինչեւ ցայսօր.
[2]մինչեւ ել Փարաւոն արքայ Եգիպտաց-
ւոց եւ առ զքաղաքն, եւ այրեաց զնա
հրով, եւ զՔանանացին եւ զՓերեզացին
զբնակեալսն ի Գազեր խոտեաց, եւ ետ
զնա Փարաւոն պաշտաաական դստեր
իւրում." եւ եղեն ծառայք հարկատուք։

## Գլ. ԺԷ

1 Եւ եղեն սահմանք ցեղի որդւոցն Մա-
նասէի, զի նա էր անդրանիկ Յովսեփայ.
Մաքիրայ՝ անդրանկանն Մանասէի հօր
Գաղաադու, քանզի այր պատերազմող
էր, Գաղաադայինն եւ Բասանացւոյն։
2 Եւ եղեւ այլոց որդւոցն Մանասէի, ըստ
տոհմից իւրեանց, որդւոցն Աբիեզերայ
եւ որդւոցն Քեղեկայ եւ որդւոցն Եսրիե-
լայ եւ որդւոցն Սիւքեմայ եւ որդւոցն
Սեմիդայեայ, եւ որդւոցն Ոփերայ, սո-
քա են որդիք Մանասէի որդւոյ Յովսե-
3 փայ արուք ըստ տոհմից իւրեանց։ Եւ

[1]Եբր. ի Բեթէլայ ի Լուզ [2][3]Եբր. պ-կ-սէ

Սաղպաադայ որդւոյ Ոփերայ, որդւոյ
Գաղաադու, որդւոյ Մաքիրայ, որդւոյ
Մանասէի, ոչ գոյին նորա ուստերք,
այլ դստերք. եւ այս են անուանք դստե-
րացն Սաղպաադայ. Մաաղա եւ Նուա
4 եւ Էգղա եւ Մեղքա եւ Թերսա։ Կա-
ցին առաջի Եղիազարու քահանայի, եւ
առաջի Յեսուայ որդւոյ Նաւեայ եւ ա-
ռաջի իշխանացն, եւ ասեն, [3]Աստուած
պատուիրեաց [2]ի ձեռն Մովսիսի տալ մեզ
ժառանգութիւն ի մէջ եղբարց մերոց։
Եւ տուաւ նոցա ժառանգութիւն հրա-
մանաւ Տեառն ի մէջ եղբարց հօր իւր-
5 եանց։ Եւ [4]եկ վիճակ Մանասէի դաշտն
Ղաբեկայ եւ Գաղաադի եւ Բասանայ",
6 որ է յայնկոյս Յորդանանու. Զի դստերք
[2]որդւոց Մանասէի ժառանգեցին վիճակ ի
մէջ [5]եղբարց իւրեանց", եւ երկիրն Գաղա-
ադու եղեւ որդւոցն Մանասէի մնացելոցն։
7 Եւ եղեն սահմանք [2]որդւոցն Մանա-
սէի յԱսերմաքթովթայ, որ է հանդէպ
Սիւքեմայ, եւ երթան սահմանքն [6]ցՅա-
մին եւ ցԱսեր՝ յաղբերն" Թափթովթայ.
8 Մանասէի եղիցի երկիր Թափթովթայ.
եւ Թափթովթա ի սահմանս Մանասէի՝
9 որդւոցն Եփրեմայ։ Եւ իջանեն սահ-
մանքն ի ձորն Կանայի ընդ հարա-
ւակողմն հանդէպ ձորոյն [7]Յայիրայ, եւ
բեւեկնին Եփրեմայ ի մէջ քաղաքին Մա-
նասէի". եւ սահմանք Մանասէի ընդ
հիւսիս ցհեղեղատն, եւ եղիցին նորա
10 ելք ծովն։ Ի հարաւակողմն կուսէ Եփ-
րեմայ եւ ի հիւսիսոյ Մանասէի. եւ ե-
ղիցի ծովն սահման նոցա. եւ յԱսեր՝
յարեւացին ի հիւսիսոյ կողմանէ, եւ յԻ-
11 սաքար՝ յարեւելից կողմանէ։ Եւ եղի-
ցին Մանասէի ընդ Իսաքար եւ ընդ Ա-
սեր, Բեթսան եւ աւանք նորա, եւ
Ամբղան եւ աւանք նորա, [8]բնակիչք
Ենդովրայ եւ աւանք նորա, եւ բնակիչք
Տանաքայ եւ աւանք նորա. եւ բնակիչք
Մակեդդովայ եւ աւանք նորա, [9]եւ եր-
12 րորդ Նափեթայ եւ աւանք նորա"։ Եւ
ոչ կարացին որդիքն Մանասէի [10]սատա-
կել զքաղաքսն զայնոսիկ. եւ [11]սկսաւ

[3]Եբր. Տէր [4]Եբր. ելին բաժինք տասն Մանա-
սէի, թող զԳաղաադ եւ զԲասան [5]Եբր. որդ-
ւոց նորա [6]Եբր. յաջմէ մինչեւ ցբնակեալսն
յաղբերն [7]Եբր. այս են քաղաքք Եփրեմայ ի
մէջ քաղաքացն Մանասէի [8]Եբր. եւ բնակիչք
Դովրայ եւ աւանք նորա, եւ բնակիչք [9]Եբր.
նաւհանգք երեք [10]Եբր. ժառանգել [11]Եբր.
յամառեցաւ

Քանանացին բնակել յերկրին յայնմիկ ։
13 Եւ եղեւ իբրեւ [1]յաղթահարեցին որդիքն
Իսրայելի, արարին զՔանանացին [2]հնա-
զանդս, բայց [3]սատակելով ոչ սատակե-
ցին՝՝ զնոսա ։
14 Ընդդէմ դարձան որդիքն Յովսեփայ Յե-
սուայ եւ ասեն, Ընդէ՞ր ժառանգեցուցեր
մեզ մի ժառանգութիւն եւ մի վիճակ, եւ
ես ժողովուրդ բազում եմ, եւ Աստուած
15 օրհնեաց զիս[4]։ Եւ ասէ ցնոսա Յեսու, Եթէ
ժողովուրդ բազում ես դու, ել յանտառն
եւ սրբեա դու քեզ զերկիրն, զՓերե-
զայեան եւ զՌափայինան, եթէ նեղ իցէ
16 քեզ լեառնդ Եփրեմի ։ Եւ ասեն որդիքն
Յովսեփայ, Չէ մեզ բաւական [5]լեառնն
Եփրեմայ. եւ անդ ընտիր ընտիրք երի-
վարաց, եւ դէն ամենայն Քանանացւոցն
բնակելոց յերկրի իմում ընդ իս՝՝, ի Բեթ-
սան եւ յաւանս նորա եւ ի ձորն Յեզ-
17 րայելի ։ Եւ խօսեցաւ Յեսու ընդ որդիսն
Յովսեփայ, ընդ Եփրեմի եւ ընդ Մա-
նասէի եւ ասէ, Թէ ժողովուրդ բազում
ես դու եւ զօրութիւն բազում ունիս,
18 մի՛ լիցի քեզ մի վիճակ. [6]Անտառն ե-
ղիցի քեզ, զի անտառ է եւ սրբեսցես
զնա, եւ եղիցին քեզ ելք նորա յորժամ
սատակեսցես զՔանանացին. [7]զի թէ-
պէտ եւ երիվարք ընտիրք՝՝ իցեն նորա,
եւ զօրագոյն քան զքեզ իցէ, [8]դու յաղ-
թահարեսցես զնա՝՝։

Գ Լ . ԺԸ

1 Եւ եկեղեցացաւ ամենայն ժողովուրդ
որդւոցն Իսրայելի ի Սելով, եւ կանգ-
նեցին անդ զխորանն վկայութեան. եւ
2 երկիրն նուաճեցաւ ի նոցանէ ։ Եւ մնա-
ցին [9]որդիքն Իսրայելի եւ ոչ ժառան-
3 գեցին եւթն ցեղն՝՝։ Եւ ասէ ցնոսա Յե-
սու, Մինչեւ յե՞րբ մեղկիցիք չմտանել
ժառանգել զերկիրն զոր ետ ձեզ Տէր
4 Աստուած հարցն [10]մերոց ։ Տուք ինձ ե-
րիս արս ի ցեղէ, եւ առաքեցից զնոսա,
եւ յարուցեալ անցանիցեն ընդ երկիրն,
եւ գրեսցեն զնա [11]առաջի իմ՝ թէ որ-
5 պէս պարտ իցէ բաժանել զնա ։ Եւ ե-
կին առ նա. եւ բաժանեաց նոցա եւթն
մասն՝՝. Յուդայ կացցէ նոցա սահման
ի հարաւոյ, եւ որդիքն Յովսեփայ կաց-
6 ցեն ի սահմանս իւրեանց ի հիւսիսոյ ։ Եւ
դուք բաժանեցէք զերկիրն եւթն բաժին,
եւ բերէք առ իս այսր, եւ հանից ձեզ
վիճակ աստ առաջի Տեառն Աստուծոյ
7 մերոյ ։ Զի ոչ գոյ ընդ ձեզ բաժին որդ-
ւոցն Ղեւեայ, զի քահանայութիւն Տեառն
է բաժին նորա. եւ Գադ եւ Ռուբէն եւ
կէս ցեղին Մանասէի առին զժառան-
գութիւն իւրեանց յայնկոյս Յորդանա-
նու յարեւելս, զոր ետ նոցա Մովսէս
ծառայ Տեառն ։
8 Եւ յարուցեալ արքն գնացին. եւ պա-
տուիրեաց Յեսու արանցն երթելոց աշ-
խարհագրել զերկիրն, եւ ասէ, Ան-
ցէք գնացէք եւ աշխարհագրեցէք զեր-
կիրն. եւ եկեսջիք առ իս այսր, եւ հա-
նից ձեզ վիճակս առաջի Տեառն ի Սելով։
9 Եւ գնացին արքն եւ շրջեցան ընդ եր-
կիրն, եւ աշխարհագրեցին զերկիրն եւ
տեսին զնա, եւ գրեցին ըստ քաղաքաց
իւրեանց եւթն բաժին ի մատեանի, եւ
10 բերին առ Յեսու ի բանակն ի Սելով ։ Եւ
արկ նոցա Յեսու վիճակ ի Սելով առաջի
Տեառն, եւ բաժանեաց անդ զերկիրն որդ-
ւոցն Իսրայելի՝ ըստ բաժանմանց իւրեանց։
11 Եւ ել նախ վիճակն Բենիամինի ըստ
տոհմից իւրեանց. եւ էին սահմանք վի-
ճակի նոցա ի մէջ Յուդայ եւ ի մէջ որդ-
12 ւոցն Յովսեփայ ։ Եւ եղեն սահմանք նոցա
ի հիւսիսոյ [12]Յորդանանու. եւ ամբարձցին
սահմանք [13]ի հարաւոյ Երեքովի ընդ հիւսի-
սի, եւ ամբարձցին ի լեառնն ընդ ծովա-
կողմն, եւ եղիցին նորա ելք [14]Մաբդա-
13 րայինն Բեթաւան. Եւ անցցեն անտի սահ-
մանքն [15]Լուզայ, ի թիկանց Լուզայ ի հա-
րաւոյ կողմանէ, այն է Բեթէլ. եւ իջցեն
սահմանքն ցԱտարոթ Ադարայ ի լեռնա-
կողմն, որ է ի հարաւոյ Բեթորոնայ ներք-
14 նոյ ։ Եւ անցցեն սահմանքն եւ պատեսցեն
առ եզերբն որ հայի ընդ ծով ի հարաւոյ,
ի լեռնէն որ հանդէպ Բեթորոնի է ընդ
հարաւոյ, եւ եղիցին նորա ելք ի Կա-
րիաթբաաղ, այն է Կարիաթարիմ քա-
ղաք որդւոցն Յուդայ. եւ այն է եզր
15 ընդ ծովակողմն ։ Եւ եզր ընդ հարաւ
յեզրէ Կարիաթարիմայ, եւ անցանեն

[1] Եբր. զօրացան [2] Եբր. հարկատու [3] Եբր. վա-
նելով ոչ վանեցին [4] Եբրայեցին յաւելու, մին-
չեւ ցայժմ [5] Եբր. լեառնն. եւ կառք երկա-
թիք ամենայն Քանանացւոց բնակելոց յերկրի
անդ հովտին [6] Եբր. Լեառնն [7] Եբր. թէ-
պէտ եւ կառք երկաթիք [8] Եբր. պակասէ [9] Եբր.
յորդւոցն Իսրայելի եւթն ցեղք որ ոչ ժառան-
գեցին [10] Եբր. ձերոց [11] Եբր. ըստ ժառան-
գութեան իւրեանց, եւ դարձցին առ իս ։ (5)
Եւ բաժանեսցեն զնա յեւթն մասն

[12] Եբր. ի Յորդանանէ [13] Եբր. ի՛ թիկանս [14] Եբր.
ցանապատն [15] Եբր. ի Լուզ

սահմանքն [1]ի Գային, եւ ելցեն յաղբեւր
16 ջրոյն Նափթոյեայ։ Եւ իջցեն սահմանքն
յեզր լերինն որ է յանդիման հովտացն
որդւոյն Ենովմայ, որ է մասն Ենակայ,
Ռափայնոցն, ի հիւսիսի. եւ իջցեն [2]ի
Գայի Ենովմայ ի թիկանց Յեբուսայ ի
հարաւոյ, եւ իջցեն յաղբեւրն Ռոգելայ.
17 Եւ հասցեն ընդ հիւսիսի, եւ անցցեն
յաղբեւրն ի Սամիւս, եւ պատեսցին առ
Գալիլովթաւ, որ է հանդէպ զառիվերին
Եդովմինեայ. եւ իջցեն ի վէմն Բաան,
18 որդւոյ Ռուբենի. Եւ անցցեն ի թիկանց
[3]Բեթարաբայ ի հիւսիսոյ, եւ իջցեն յԱ-
19 րաբա. Եւ իջցեն սահմանքն ի թիկանց
Բեթագղայ ի հիւսիսոյ [4]ծովու, եւ եղի-
ցին ելք սահմանացն ի սար ծովուն Աղւոյ
ի հիւսիսոյ, եւ յեզր Յորդանանու ի հա-
րաւոյ. այս են սահմանքն նոցա ի հա-
20 րաւոյ։ Եւ Յորդանան զատուցանէ ի կող-
մանէ արեւելից։ Այս է ժառանգութիւն
որդւոյն Բենիամինի, եւ սահմանք նոցա
շուրջանակի ըստ տոհմից իւրեանց։
21 Եւ եղեն քաղաքք ցեղի որդւոյն Բե-
նիամինի ըստ տոհմից իւրեանց, Երի-
22 քով եւ Բեթագղա եւ Ամեկասիս Եւ
Բեթարաբա եւ Սեմարիմ եւ Բեթէլ եւ
23 Աւիմ եւ Ափար եւ Ափրա Եւ Կարեմ
24 եւ Քափերամին եւ Գաբաա. Քաղաքք
25 երկոտասան եւ աւանք նոցա։ Գաբաւոն
26 եւ Ռամմա եւ Բերովթ Եւ Մասփա եւ
27 Կեփիրա եւ Ամուսա Եւ Ռէկէմ եւ Յեր-
28 փայէլ եւ Թարաղա Եւ Սելա, Ելէփ եւ
Յեբուս՝ այն է Երուսաղէմ, եւ Գաբաաթ
եւ քաղաքն Արեմ. քաղաքք չորեքտա-
սան, եւ աւանք նոցա։ Այս է ժառան-
գութիւն որդւոյն Բենիամինի ըստ տոհ-
մից իւրեանց։

Գլ. ԺԹ

1 Եւ ել երկրորդ վիճակն Շմաւոնի, ցեղի
որդւոյն Շմաւոնի ըստ տոհմից իւրեանց.
եւ եղեւ ժառանգութիւն նոցա ի մէջ
2 վիճակի որդւոյն Յուդայ։ Եւ եղեւ վի-
ճակ նոցա Բերսաբէէ եւ Սաբէէ եւ Մով-
3 ղադա Եւ Ասերսուաղ եւ Բոլղա եւ Ա-
4 սոմ Եւ Եղթուղաայ եւ Բաթուղ եւ Երմա
5 Եւ Սիկեղա եւ Բեթմարքաբովթ եւ
6 Ասերսուսիմ Եւ Բեթղաբաութ, եւ [5]ագա-
րակք նոցա". քաղաքք երեքտասան եւ
7 աւանք նոցա։ Ային եւ Ռեմոն եւ Ե-
թեր եւ Ասան. քաղաքք չորք եւ ա-
8 ւանք նոցա։ Եւ ամենայն ագարակք
շուրջ զքաղաքօքն այնոքիւք, մինչեւ
ցԲաաղեթ Բերամմովթ, ի մուտս Ռա-
մաթայ ընդ հարաւ։ Այս է ժառանգու-
թիւն ցեղի որդւոյն Շմաւոնի ըստ տոհ-
9 մից իւրեանց։ Ի վիճակին Յուդայ ժա-
ռանգութիւն ցեղի որդւոյն Շմաւոնի.
քանզի եղեւ բաժին որդւոյն Յուդայ
մեծ քան զնոցայն, եւ ժառանգեցին որ-
դիքն Շմաւոնի ի մէջ վիճակի նոցա։
10 Եւ ել երրորդ վիճակն Զաբուղոնի
ըստ տոհմից իւրեանց. եւ եղեն սահ-
մանք ժառանգութեան նոցա մինչեւ ցՍա-
11 րիդ. Սահմանք նոցա ծովն եւ Մարա-
գա, եւ հասցեն ցԴաբասթէ. եւ հան-
դիպեսցին ձորայն որ է հանդէպ Յեկնա-
12 մայ, Եւ դարձցին ի Սարիդա զէմ
յանդիման յարեւելից [6]Բեթսամեսայ, ի
սահմանս Քասալովթ Թաբովրայ, եւ
անցցեն ի Դաբարաթ, եւ ամբարձցին
13 առ Յափագայիւ։ Եւ անտի պատիցին
հանդէպ ընդ արեւելս [6]ձգեալ ի քաղաքն"
Կատասիմ, եւ անցցեն յՌեմմոն, [7]յԱ-
14 մաթարիմ, Աննուայ", Եւ պատեսցին
զսահմանօքն հիւսիսոյ ցԵնկանթովն, եւ
եղիցին ելք նոցա [2]ի Գայի՝ Յեփթայելի.
15 Եւ ընդ Կատտամաթ եւ ընդ Նաաղովղ
եւ ընդ Սեմրոն եւ ընդ Յադեղա եւ ընդ
Բեթղեհեմ. քաղաքք երկոտասան եւ ա-
16 ւանք նոցա։ Այս է ժառանգութիւն ցե-
ղի որդւոյն Զաբուղոնի ըստ տոհմից իւր-
եանց, քաղաքք նոցա եւ աւանք իւրեանց։
17 Եւ Իսաքարայ ել չորրորդ վիճակն,
որդւոյն Իսաքարու ըստ ազգականու-
18 թեան իւրեանց։ Եւ եղեն սահմանք նո-
ցա Յեզրայէլ եւ Աքասեղովթ եւ Սու-
19 նամ Եւ Ափերիմ եւ Սիոն եւ [4]Ռամաթ
20 եւ Ենդանիլ եւ Ռեհաբ եւ" Անաբեթ
21 Եւ Ռաբբովթ եւ Կեսիոն եւ Այեմէս Եւ
Ռամաթ եւ Ենգադիս եւ Ենդադդա եւ
22 Բեթմասես. Եւ կցեսցին սահմանքն ի
Թաբովր եւ [8]ի Կասիմ ընդ ծովակողմն",
եւ ի Բեթսամիւս. եւ եղիցին ելք սահ-
մանաց նոցա Յորդանան. քաղաքք վեշ-
23 տասան եւ աւանք նոցա։ Այս է ժա-
ռանգութիւն ցեղի որդւոյն Իսաքարու
ըստ տոհմից իւրեանց. քաղաքք եւ ա-
գարակք իւրեանց։

[1]Եբր· ընդ արեւմուտս [2]Եբր· ի ձորն [3]Եբր· ի հանդիպոյ Արաբայ [4]Եբր· զոլուաւ [5]Եբր· Սարուհէն

[6]Եբր· ի Գեթքոփեր, ի [7]Եբր· որ ձգի ի Նուա
[8]Եբր· ի Սահասիմ

24 Եւ ել վիճակն հինգերորդ ցեղի որդ-
25 ւոցն Ասերայ ըստ տոհմից իւրեանց ։ Եւ
եղեն սահմանք նոցա Քեղկաթ եւ Ոողի
26 եւ Բատնէ եւ Աքսափ Եւ [1]Ամաթ եւ
Մասաղ ․ եւ կցեսցի ի Կարմեղ ընդ ծո-
վակողմն ․ եւ [2]Սիովր եւ ի Բաղանա-
27 թէ՝՝, Եւ դարձցին յարեւելից կողմանէ ի
Բեթդագոմն, եւ կցեսցի ի Զաբուղոն եւ
[3]ի Գայի, յԵփթայեղի, ընդ հիւսիսի ․ եւ
մտցեն սահմանքն ի Սափաթա Բեթա-
մեկ ․ եւ գնասցեն ընդ սահմանակիցս
Անայելի՝՝, եւ անցցեն ի Քաբովղ յահե-
28 կէ կողմանէ, Եւ յԱքրոն, եւ յՌովբ,
եւ յԱմմոն, եւ ի Կանայի մինչեւ ի Սի-
29 դոն մեծ ․ Եւ դարձցին սահմանքն յՌա-
մա մինչեւ ցքաղաք ամրոցին Տիւրաց-
ւոց, եւ դարձցին սահմանքն ի Սովսա,
եւ եղիցին ելք նորա ծովն, եւ վիճակն
30 Ակզիփայ ․ Եւ Ամմա եւ Ափեկա եւ Ռա-
ւովբա ․ քաղաքք քսան եւ երկու եւ ա-
31 ւանք նոցա ։ Այս է ժառանգութիւն ցեղի
որդւոցն Ասերայ ըստ տոհմից իւրեանց ․
քաղաքք նոցա եւ աւանք իւրեանց ։
32 Եւ Նեփթաղիմայ ել վիճակն վեցե-
րորդ, որդւոյն Նեփթաղիմայ ըստ տոհ-
33 մից իւրեանց ։ Եւ եղեն սահմանք նոցա
[4]Մեեղեփ եւ Մայեղովմ եւ Բերսանա-
յիմ եւ Արմէ եւ՝՝ Նագեբ եւ Յաբնեղ
մինչեւ ցՂակում ․ եւ եղեն ելք նոցա
34 Յորդանան ։ Եւ դարձցին սահմանքն [5]ի
ծովն Ազանովթ Թաբովր, եւ անցցեն
անտի ի Կովկ ․ եւ կցեսցին ի հարաւոյ՝
Զաբուղոնի, եւ Ասերայ կցեսցին [6]ի ծո-
վակողմն, Յուդայ եւ՝՝ Յորդանան յա-
35 րեւելից կողմանէ ։ Եւ քաղաքք պարս-
պաւորք [7]Տիւրացւոց՝ Տիւրոս՝՝ եւ Ամաթ
36 եւ Ռեկկաթ եւ Քեններեթ Եւ Ադամի
37 եւ Ռամմա եւ Ասովր Եւ Կադէս եւ
38 Եդրային եւ Ակնասովր Եւ Յարոն եւ
Մագդաղիէլ, Ովրամ եւ Բեթանաթ
եւ Բեթսամիւս ․ քաղաքք ինն եւ տասն
39 եւ ապարանք նոցա ։ Այս է ժառանգու-
թիւն ցեղի որդւոցն Նեփթաղիմայ, ըստ
տոհմից իւրեանց, քաղաքք եւ աւանք
նոցա ։
40 Եւ ցեղի որդւոցն Դանայ ըստ տոհ-
մից իւրեանց ել վիճակն եւթներորդ ։

[1] Եբր․ Ալամելէք եւ Ամաթ [2] Եբր․ ի Սիովրլեբնաթ
[3] Եբր․ ի ձորն Յեփթայեղի ընդ հիւսիսոյ ի Բեթամեկ եւ ի Նէիէլ [4] Եբր․ յԵղեփայ եւ յԵղովնոյ ի Սանանիմ եւ յԱդամի [5] Եբր․ յարեւմտից
[6] Եբր․ յարեւմտից, եւ ի Յուդայ մինչեւ ի [7] Եբր․ Սադդիմ, Սէր

41 Եւ եղեն սահմանք ժառանգութեան նո-
42 ցա Սարաա եւ [8]Եսթաւոլ Եւ Սաղաբին
43 եւ Յեթղա եւ Թամնա Եւ Եղթեկով եւ
44 Բաաղովթ եւ Բանեբարակ, Եւ քա-
ղաքք Սամէս եւ Յաաղոն եւ Եղոն եւ
45 Ակկարոն Եւ Գաբաթոն եւ Յութ եւ
46 Գեթրեմոն, Եւ ի ծովէն Բաղէից, եւ
47 Բովրոնն ․ սահման մերձ Յոպպէ՝՝։ Եւ
ել սահման որդւոցն Դանայ ի նոցանէն ։
[9]Այս է ժառանգութիւն ցեղի որդւոցն
Դանայ՝ ըստ տոհմից իւրեանց, քաղաքք
եւ աւանք նոցա ։ Եւ ոչ ճնճեցին որ-
դիքն Դանայ զԱմովրհացին զնեղիչն իւր-
եանց ի լերինն ․ եւ ոչ թողուին զնոսա
Ամովրհացիքն իջանել ի հովիտն, եւ
նեղէին ի նոցանէ զսահմանս բաժնի իւր-
եանց ։՝՝ Եւ գնացին որդիքն Դանայ եւ
եսուն պատերազմ ընդ Ղեսեմայ, եւ
առին զնա եւ հարին զնա սրով սուսե-
րի ․ եւ ժառանգեցին զնա եւ բնակեցին
ի նմա ․ եւ անուանեցին զՂեսեմ՝ Դան,
48 ըստ անուան հօրն իւրեանց ։ Այս է ժա-
ռանգութիւն ցեղի որդւոցն Դանայ ըստ
ազգականութեան իւրեանց ․ քաղաքս
այսոքիկ եւ ագարակք իւրեանց ։
49 Եւ վախճանեցին ժառանգել զերկիրն
ըստ սահմանաց իւրեանց ։ [9]Եւ Ամովրհա-
ցին տեւեաց բնակել յԵղոմ եւ ի Սաղա-
միմ ․ եւ ծանրացաւ ձեռն Եփրեմի ի վե-
րայ նոցա, եւ եղեն նոցա ի հարկա-
տուս ․ եւ գնացին նկատել զերկիրն ըստ
սահմանաց նոցա ։՝՝ Եւ ետուն որդիքն
Իսրայելի ժառանգութիւն Յեսուայ որդ-
50 ւոյ Նաւեայ ի մէջ իւրեանց ․ Հրամա-
նաւ Տեառն ետուն նմա զքաղաքն զոր
խնդրեաց զԹամնաթսարա որ է ի լերինն
Եփրեմայ, եւ շինեաց զքաղաքն եւ բնա-
կեցաւ ի նմա ։
51 Այս են բաժինք՝ զորս բաժանեաց Ե-
ղիազար քահանայ եւ Յեսու Նաւեան,
եւ իշխանք նահապետութեանց ցեղիցն
Իսրայելի, վիճակօքն ի Սելով առաջի
Տեառն առ դրան խորանին վկայու-
թեան ․ եւ [10]գնացին նկատել՝՝ զերկիրն ։

[8] Եբր․ Եսթաւուղ եւ Իրսամէս (42) Եւ Սաղաբին եւ Այեղոն եւ Յեթղա (43) Եւ Եղոն եւ Թամնա եւ Ակկարոն․ (44) Եւ Եղթեկէ եւ Գաբաթոն եւ Բաաղովթ (45) Եւ Յուդ եւ Բանեբարակ եւ Գեթրեմոն (46) Եւ Մէարկոն եւ Ռակկոն հանդերձ սահմանաւ, յանդիման Յոպպէի
[9] Յեբր․ պակաս [10] Եբր․ վախճանեցին բաժանել

## Գլ. Ի

1 Խօսեցաւ Տէր ընդ Յեսուայ եւ ասէ,
Խօսեաց ընդ որդիսն Իսրայէլի եւ ա-
2 սասցես, Տուք զքաղաքս ապաստանայն
զորոց խօսեցայ ընդ ձեզ ի ձեռն Մով-
3 սիսի, Ապաստան սպանողի որ սպանանէ
զանձն ակամայ յանգէտս, եւ եղիցին
ձեզ քաղաքք ապաստանի, [1]եւ մի՛ մեռա-
ցի սպանողն" ի մերձաւորէ արեանն,
[1]մինչեւ կացցէ առաջի ժողովրդեանն
4 յատենի." Եւ փախիցէ ի մի ի քաղա-
քացն այնոցիկ, եւ կացցէ ի մուտս դրան
քաղաքին, եւ խօսեսցի յականջս ծերոց
քաղաքին այնորիկ զբանս իւր. եւ ժո-
ղովեսցեն զնա ժողովուրդն առ ինք-
եանս, եւ տացեն նմա տեղի, եւ բնա-
5 կեսցէ ընդ նոսա։ Եւ եթէ երթիցէ մեր-
ձաւոր արեանն զկնի նորա, մի՛ մատ-
նեսցեն զսպանողն ի ձեռս նորա. քան-
զի յանգէտս եհար զընկերն իւր, եւ ոչ
6 ատեայր զնա յերէկն եւ յեռանդ։ Եւ
բնակեսցէ ի քաղաքին յայնմիկ մինչեւ
կացցէ առաջի ժողովրդեանն յատենի,
մինչեւ մեռանիցի քահանայն մեծ որ ի-
ցէ յաւուրսն յայնոսիկ. եւ ապա դարձ-
ցի սպանողն եւ եկեսցէ ի տեղի իւր եւ
ի տուն իւր, ի քաղաքն ուստի փախեաւ։
7 Եւ զատուցին զԿադէս ի Գալիլեա ի
լերինն Նեփթաղիմայ, եւ զՍիւքեմ ի
լերինն Եփրեմայ, եւ զքաղաքն Արբոկ՝
8 այն է Քեբրոն ի լերինն Յուդայ, Եւ յայն-
կոյս Յորդանանու յարեւելից Երեքովի,
ետուն զԲոսոր յանապատին ի դաշտի՝ ի
ցեղէն Ռուբենի, եւ զՌամովթ ի Գա-
ղաադ՝ ի ցեղէն Գադայ, եւ զԳովղան ի
9 Բասանաստան՝ ի ցեղէն Մանասէի։ Այն
են քաղաքք [2]հռչակաւորք ամենայն որդ-
ւոցն Իսրայէլի եւ եկին յեցելոյ ի նո-
սա, փախչել անդր ամենայնի որ հարկա-
նիցէ զանձն ակամայ. զի մի՛ մեռանիցի
ի ձեռաց մերձաւորի արեանն, մինչեւ
կացցէ առաջի ժողովրդեանն յատենի։

## Գլ. ԻԱ

1 Եւ մատեան նահապետք որդւոցն Ղեւ-
եայ առ Եղիազար քահանայ, եւ առ Յե-
սու Նաւեայ, եւ առ նահապետս տոհ-
2 մից ցեղից որդւոցն Իսրայէլի, Եւ խօ-
սեցան ընդ նոսա ի Սելով յերկրին Քա-
նանացւոց եւ ասեն, Հրաման ետ Տէր
ի ձեռն Մովսիսի՝ տալ մեզ քաղաքս բնա-
կելոյ, եւ զանդաստանս նոցա անասնոց
3 մերոց։ Եւ ետուն որդիքն Իսրայէլի Ղեւ-
տացւոցն ի ժառանգութեան հրամանաւ
Տեառն զքաղաքսն զայնոսիկ եւ զան-
դաստանս նոցա։
4 Եւ ել վիճակ տոհմին Կահաթու. եւ
եղեն որդւոցն Ահարոնի՝ քահանայիցն
Ղեւտացւոց, ի ցեղէն Յուդայ եւ ի ցե-
ղէն Շմաւոնի եւ ի ցեղէն Բենիամինի՝
5 վիճակաւ քաղաքք երեքտասանք։ Եւ
այլոց որդւոցն Կահաթու մնացելոց յազ-
գականութենէ ցեղին Եփրեմայ, եւ ի
ցեղէն Դանայ եւ ի կիսոյ ցեղին Մանա-
6 սէի՝ վիճակաւ քաղաքք տասն։ Եւ որդ-
ւոցն Գերսոնի յազգականութենէ ցեղին
Իսաքարայ եւ ի ցեղէն Ասերայ, եւ ի
ցեղէն Նեփթաղիմայ եւ ի կիսոյ ցեղին
Մանասէի ի Բասան, վիճակաւ քաղաքք
7 երեքտասան։ Եւ որդւոցն Մերարեայ
ըստ տոհմից իւրեանց, ի ցեղէն Ռուբե-
նի եւ ի ցեղէն Գադայ եւ ի ցեղէն Զա-
բուղոնի, վիճակաւ քաղաքք երկոտա-
8 սան։ Եւ ետուն որդիքն Իսրայէլի Ղեւ-
տացւոցն զքաղաքսն զայնոսիկ եւ զան-
դաստանս նոցա, զոր օրինակ պատուի-
րեաց Տէր Մովսիսի, վիճակաւ։
9 Եւ ետ ցեղ որդւոցն Յուդայ եւ ցեղ
որդւոցն Շմաւոնի [1]եւ ցեղ որդւոցն Բե-
նիամինի" զքաղաքսն զայնոսիկ, որ կո-
10 չեցան [3]յանուն եւ յազգ Որդւոցն" Ա-
հարոնի, ի տոհմէ Կահաթու որդւոցն
11 Ղեւեայ. զի նոցա ել նախ վիճակն։ Եւ
ետուն նոցա [4]զԿարիաթարբոկ զմայր
քաղաքացն" Ենակայ, այն է՝ Քեբրոն ի
լերինն Յուդայ, եւ զանդաստանս շուրջ
12 զնովաւ. Եւ զագարակս նորա եւ զաւանս
նորա զոր [5]ետ Յեսու" Քաղեբայ որդւոյ
13 Յեփոնեայ ի կալուած։ Եւ որդւոցն Ա-
հարոնի քահանայի ետուն քաղաք ա-
պաստանի սպանողի՝ զՔեբրոն եւ զզա-
տուցեալսն ի նմա, եւ զԼեբնա եւ զզա-
14 տուցեալսն ի նմա, Եւ զՅեթեր եւ զզա-
տուցեալսն ի նմա, եւ զԵսթեմով եւ
15 զզատուցեալսն ի նմա, Եւ զԱղոն եւ զզա-
տուցեալսն ի նմա, եւ զԴաբիր եւ զզա-
16 տուցեալսն ի նմա, Եւ զԱյին եւ զզա-
տուցեալսն ի նմա, եւ զՅետտա եւ զզա-
տուցեալսն ի նմա, եւ զԲեթսամիւս եւ
զզատուցեալսն ի նմա. քաղաքք ինն,

[1] Յեբր. դ—լ—ե [2] Եբր. սահմանեալք

[3] Եբր. յանուանէ. (10) Եւ եղեն որդւոցն [4] Եբր. զքաղաքն Արբոկայ, հօր [5] Եբր. ետուն

17 յերկուց ցեղիցն այնոցիկ ։ Եւ ի ցեղէն
Բենիամենի՝ զԳաբաւոն եւ զպատու-
ցեալսն ի նա , եւ զԳաբաա եւ զպատու-
18 ցեալսն ի նա , Եւ զԱնաթովթ եւ զպա-
տուցեալսն ի նա , եւ զԱլմոն եւ զպա-
19 տուցեալսն ի նա . քաղաքս չորս ։ Ամե-
նայն քաղաքք որդւոց Ահարոնի՝ քահա-
նայից , քաղաքք երեքտասանք , եւ ան-
դաստանք նոցա ։
20 Եւ տոհմից որդւոցն Կահաթու Ղեւ-
տացւոցն՝ մնացելոց յորդւոցն Կահաթու ,
եւ եղեն քաղաքք [1]սահմանաց նոցա ի
21 ցեղէն Եփրեմայ . Եւ ետուն նոցա քա-
ղաք ապաստանի սպանողի՝ զՍիւքեմ
եւ զպատուցեալսն ի նա ի լերինն Եփ-
րեմայ , եւ զԳազեր եւ զպատուցեալսն
22 ի նա , Եւ զԿաբսեմ եւ զպատուցեալսն
ի նա , եւ [2]զվերին Բեթորոն եւ զպա-
23 տուցեալսն ի նա . քաղաքք չորք ։ Ի ցե-
ղէն Դանայ՝ զԵղթեկով եւ զպատուցեալսն
ի նա , եւ զԳեբեթոն եւ զպատուցեալսն
24 ի նա , Եւ զՅաղոն եւ զպատուցեալսն ի
նա , եւ զԳեթրեմոն եւ զպատուցեալսն
25 ի նա . քաղաքք չորք ։ Եւ կիսոյ ցեղին
Մանասէի՝ զԹանաք եւ զպատուցեալսն
ի նա , [3]եւ զԲեթսան" եւ զպատուցեալսն
26 ի նա . քաղաքս երկուս ։ Ընդ ամենայն՝
քաղաքս տասն եւ զպատուցեալսն ի նոսա ,
տոհմի որդւոցն Կահաթու մնացելոց ։
27 Եւ որդւոցն Գերսոնայ , ազգականացն
Ղեւտացւոց , ի կիսոյ ցեղէն Մանասէի
քաղաքս պատուցեալս սպանողաց՝ զԳով-
ղան ի Բասանիտանի եւ զպատուցեալսն
ի նա , եւ զԲեեստարա եւ զպատուցեալսն
28 ի նա . քաղաքս երկուս ։ Եւ ի ցեղէն Ի-
սաքարայ՝ զԿեսիոն եւ զպատուցեալսն ի
նա , եւ զԴաբրաթ եւ զպատուցեալսն ի
29 նա , Եւ զԵրիմովթ եւ զպատուցեալսն ի
նա , եւ [4]զաղբերն Նամակայ" եւ զպա-
30 տուցեալսն ի նա . քաղաքս չորս ։ Եւ ի
ցեղէն Ասերայ՝ զՄասաղ եւ զպատու-
ցեալսն ի նա , եւ զԱբդոն եւ զպատու-
31 ցեալսն ի նա , Եւ զՔեղկաթ եւ զպա-
տուցեալսն ի նա , եւ զՌոոբ եւ զպա-
32 տուցեալսն ի նա . քաղաքս չորս ։ Եւ ի
ցեղէն Նեփթաղիմայ՝ քաղաքս պատու-
ցեալս սպանողի , զԿադէս ի Գալիլեա
եւ զպատուցեալսն ի նա , զԱմաթդովր եւ
զպատուցեալսն ի նա , եւ [5]զՆոյեմոն եւ
զպատուցեալսն ի նմա . քաղաքս երիս ։

[1] Եբր. վիճակի [2] Յեբր. պակաս [3] Եբր. եւ զԳեթ-րեմոն [4] Եբր. զԷնգաննիմ [5] Եբր. զԿարթան

33 Ընդ ամենայն քաղաքս Գերսոնի ըստ
տոհմից իւրեանց քաղաքս երեքտասան ,
եւ պատուցեալք նոցին ։
34 Եւ տոհմի որդւոցն Մերարեայ այլոցն
Ղեւտացւոց , ի ցեղէ որդւոցն Զաբու-
ղոնի՝ զՅեկնամ եւ զանդաստանս նորա ,
[2]զԿադէս եւ զանդաստանս նորա," զԿար-
35 թա եւ զանդաստանս նորա , ԶԴեմնա
եւ զանդաստանս նորա , զՆաաղոլ եւ
զանդաստանս նորա . քաղաքս [6]հինգ ։
36 Եւ [2]յայնկոյս Յորդանանու ի հանդիպէ
Երիքովի," ի ցեղէն Ռուբենի [2]քաղաքս
ապաստանի սպանողի" զԲոսոր [2]յանա-
պատին Միսովրայ" եւ զանդաստանս
նորա , եւ զՅազեր եւ զանդաստանս նո-
37 րա , [7]ԶԿեդամ եւ զանդաստանս նորա ,
[8]զՄասփա եւ զանդաստանս նորա . քա-
38 ղաքս չորս ։ Եւ ի ցեղէն Գադայ՝ քա-
ղաքս ապաստանի սպանողի , զՌամովթ
ի Գաղաադ եւ զանդաստանս նորա , զՄա-
39 նայիմ եւ զանդաստանս նորա , ԶԵսեբոն
եւ զանդաստանս նորա , եւ զԱզեր եւ
զանդաստանս նորա . ընդ ամենայն՝ քա-
40 ղաքս չորս ։ Ամենայն քաղաքքն որդւոցն
Մերարեայ , ըստ տոհմից իւրեանց մնա-
ցելոց ի ցեղէն Ղեւեայ , եւ եղեն սահ-
մանք նոցա քաղաքք երկոտասան ։
41 Ընդ ամենայն՝ քաղաքք Ղեւտացւոցն
ի մէջ կալուածոց որդւոցն Իսրայէլի՝
քառասուն եւ ութ քաղաք , եւ անդաս-
տանք նոցա [2]շուրջ զքաղաքօքն այնո-
42 ցիկ". Քաղաքք , եւ անդաստանք շուրջ
զքաղաքօքն . նոյնպէս ամենեցունց քա-
ղաքացն այնոցիկ ։
[2]Եւ վախճանեաց Յեսու բաժանել զեր-
կիրն սահմանօք իւրովք ։ Եւ ետուն որ-
դիքն Իսրայէլի բաժին Յեսուայ ըստ հրա-
մանի Տեառն՝ ետուն նմա զքաղաքն զոր
խնդրեաց՝ զԹամնասաքար ի լերինն Եփ-
րեմայ . եւ շինեաց Յեսու զքաղաքն եւ
բնակեցաւ ի նմա ։ Եւ առ Յեսու զսուրսն
քարեղէնս որով թլփատեաց զորդիսն Իս-
րայէլի զելեալս ի ճանապարհի անապա-
տին , քանզի ոչ թլփատեցան յանապատի
անդ , եւ եդ զնոսա ի Թամնասաքար ։"
43 Եւ ետ Տէր Իսրայէլի զամենայն երկիրն
զոր երդուաւ տալ հարցն նոցա , եւ ժա-
44 ռանգեցին զնա , եւ բնակեցին ի նմա ։ Եւ
հանգոյց զնոսա Տէր շուրջանակի՝ որպէս
երդուաւ հարցն նոցա . եւ ոչ ոք յարեաւ
ընդդէմ նոցա ի թշնամեաց իւրեանց . զի

[6] Եբր. չորս [7] Եբր. զԿադեմովթ [8] Եբր. զՄեփայաթ

զամենայն թշնամիս նոցա մատնեաց
45 Տէր ի ձեռս նոցա ։ Եւ ոչ անկաւ բան
մի յամենայն բանից բարեաց զոր խօսե-
ցաւ Տէր որդւոցն Իսրայէլի, այլ ամե-
նայն ինչ եղեւ ։

## Գլ. ԻԲ

1 Յայնժամ կոչեաց Յեսու զորդիսն Ռու-
բենի եւ զորդիսն Գադայ եւ զկէս ցեղին
2 Մանասէի, Եւ ասէ ցնոսա, Դուք ձե-
զէն լուարուք զամենայն ինչ զոր պա-
տուիրեաց ձեզ Մովսէս ծառայ Տեառն,
եւ ունկնդիր եղէք բարբառոյ իմոյ ըստ
3 ամենայնի զոր պատուիրեցի ձեզ ։ Եւ ոչ
թողէք զեղբարս ձեր զայնչափ աւուրս,
[1]եւս աւելի" մինչեւ ցայսօր ժամանակի
եւ պահեցէք զպատուիրանս Տեառն Ա-
4 ստուծոյ ձերոյ ։ Եւ արդ հանգոյց Տէր
Աստուած [2]մեր զեղբարս ձեր, որպէս եւ
ասաց նոցա. բայց արդ դարձեալ եր-
թայք ի տունս ձեր յերկիր կալուա-
ծոց ձերոց, զոր ետ ձեզ Մովսէս ծա-
5 ռայ Տեառն յայնկոյս Յորդանանու ։ Այլ
զգոյշ լինիջիք յոյժ առնելոյ զպատուի-
րանսն եւ զօրէնսն զոր պատուիրեաց
ձեզ Մովսէս ծառայ Տեառն, սիրել զՏէր
Աստուած ձեր եւ գնալ յամենայն ճա-
նապարհս նորա, պահել զպատուիրանս
նորա, եւ յարել ի նա եւ պաշտել զնա
յամենայն սրտէ ձերմէ եւ յամենայն անձ-
6 նէ ձերմէ ։ Եւ օրհնեաց զնոսա Յեսու
եւ արձակեաց զնոսա, եւ գնացին ի
7 տունս իւրեանց ։ Եւ կիսոյ ցեղին Մա-
նասէի ետ Մովսէս ի Բասանատիս, եւ
կիսոյն ետ Յեսու ընդ եղբարս նոցա [3]առ
ծովեզերըն" ։ Եւ յորժամ արձակեաց զնո-
սա Յեսու ի տունս իւրեանց, եւ օրհ-
8 նեաց զնոսա. Եւ խօսեցաւ ընդ նոսա՝
եւ ասէ, Ընչիւք բազմօք [4]երթիցեն ի
տունս իւրեանց", եւ անասուն բազում
յոյժ, եւ արծաթ եւ ոսկի, եւ պղինձ
եւ երկաթ, եւ հանդերձ բազում յոյժ
[5]բաժանեցան աւար ի թշնամեաց ընդ
եղբարս իւրեանց" ։
9 Եւ դարձան եւ գնացին որդիքն Ռու-
բենի եւ որդիքն Գադայ եւ կէս ցեղին
Մանասէի յորդւոցն Իսրայէլի, ի Սելո-
վայ, յերկրէն Քանանացւոց, երթալ
յերկիրն Գաղաադու՝ յերկիր կալուածոց
իւրեանց զոր ժառանգեցին հրամանաւ
Տեառն ի ձեռն Մովսիսի ։
10 Եւ եկին [6]ի Գալիլովթ Յորդանանու,
որ է յերկրին Քանանու, եւ շինեցին որ-
դիքն Ռուբենի եւ որդիքն Գադայ եւ կէս
ցեղին Մանասէի սեղան առ եզերբ Յոր-
11 դանանու, սեղան մեծ տեսանելով ։ Եւ
լուան որդիքն Իսրայէլի եւ ասեն եթէ՝ Ահա
շինեցին որդիքն Ռուբենի եւ որդիքն Գա-
դայ եւ կէս ցեղին Մանասէի սեղան ի
սահմանս երկրին Քանանացւոց [6]ի Գա-
լիլովթ Յորդանանու, յայնկոյս որդւոցն
12 Իսրայէլի. Եւ լուան որդիքն Իսրայէլի,
եւ ժողովեցան որդիքն Իսրայէլի ի Սե-
լով, ելանել տալ ընդ նոսա պատերազմ ։
13 Եւ առաքեցին որդիքն Իսրայէլի առ որ-
դիսն Ռուբենի եւ առ որդիսն Գադայ եւ
առ կէս ցեղին Մանասէի ի Գաղաադ,
զՓենէէս զորդի Եղիազարու [1]որդւոյ Ա-
14 հարոնի" քահանայի Եւ տասն այր իշ-
խանայն ընդ նմա, մի մի իշխան ի նա-
հապետացն՝ յամենայն ցեղից Իսրայե-
լի. իշխանք տանց նահապետաց էին հա-
15 զարապետք Իսրայէլի. Եւ եկին առ որ-
դիսն Ռուբենի եւ առ որդիսն Գադայ եւ
առ կէս ցեղին Մանասէի ի Գաղաադ.
16 խօսեցան ընդ նոսա եւ ասեն, Այսպէս
ասէ ամենայն ժողովուրդն Տեառն, Զի՞նչ
են յանցանքդ այդոքիկ զոր յանցեայք ա-
ռաջի [1]Տեառն Աստուծոյ Իսրայէլի, դառ-
նալ[7] յետս ի Տեառնէ, շինել ձեզ սե-
ղան, եւ լինել ձեզ[7] ապստամբ ի Տեառնէ
17 [1]Աստուծոյ մերմէ" ։ Միթէ փո՞քր իցեն
մեզ մեղքն Փեգովրայ զի ոչ եմք սրբեալ
ի նմանէ մինչեւ ցայսօր, եւ եղեն հա-
րուածք ի վերայ ժողովրդեանն Տեառն.
18 Եւ դուք դարձայք այսօր ի Տեառնէ.
եւ եղիցի թէ ապստամբիցէք այսօր ի
Տեառնէ, եւ լինիցի վաղիւ բարկութիւն
19 ի վերայ ամենայն Իսրայէլի ։ Եւ արդ
եթէ [8]փոքր իցէ ձեզ երկիր կալուածոց
ձերոց, անցէք յերկիր կալուածոց Տեառն,
ուր հանգեալ է խորանն Տեառն, եւ ժա-
ռանգեցէք ի միջի մերում. եւ մի՛ լինիք
ապստամբք ի Տեառնէ, եւ մի՛ ի մէնջ
ապստամբէք, վասն շինելոյ ձերոյ սե-
ղան արտաքոյ քան զսեղան Տեառն Ա-
20 ստուծոյ մերոյ ։ Ո՞չ ապաքէն Աքար Զա-
րայեան յանցեաւ յանցանս ի նզովից անէ-

[1]Յեբր. դոլոտ [2]Եբր. ձեր [3]Եբր. յայնկոյս Յորդանանու ընդ արեւմուտս [4]Եբր. դարձարուք ի վրանս ձեր [5]Եբր. բաժանեցարուք զաւարն ի թշնամեաց ձերոց ընդ եղբարս ձեր

[6]Այսինքն, ի սահմանս [7]Եբրայեցին յաւելու, այսօր [8]Եբր. պիղծ

ալի , եւ ի վերայ ամենայն ժողովրդեանն
Իսրայելի եղեւ բարկութիւն . եւ [1]նա
միայն էր ,՝՝ մի՞թէ ինքն միայն մեռաւ
յիւրում ի մեղսն ։
21 Պատասխանի ետուն որդիքն Ռուբե֊
նի եւ որդիքն Գադայ եւ կէս ցեղին Մա֊
նասէի , խօսեցան ընդ հազարապետսն
22 եւ ասեն , Աստուած՝ Աստուած է Տէր ,
եւ Աստուած՝ Աստուած ինքնին գիտէ ,
եւ Իսրայէլ ինքնին գիտասցէ , եթէ վասն
ապստամբութեան ինչ յանցեաք առաջի
Տեառն , մի՛ ապրեցուսցէ զմեզ յաւուրս
23 յայսմիկ . Եւ եթէ շինեցաք մեզ սեղան
ապստամբելոյ ի Տեառնէ մերմէ , հանել
ի վերայ նորա [2]զո՞ղջակիզաց՝՝, կամ
եթէ առնել ի վերայ նորա պո՞ [3]փրկու֊
24 թեան , Տէր ինքնին խնդրեսցէ ։ Այլ
վասն երկիւղի արարաք զայս . ասեմք ,
Գուցէ խօսեսցին որդիքն ձեր ընդ որ֊
դիսն մեր եւ ասիցեն , թէ Զի՞ կայ ձեր
25 եւ Տեառն Աստուծոյ Իսրայելի . Եւ սահ֊
ման եդ Տէր ընդ մեզ եւ ընդ ձեզ , որ֊
դիք Ռուբենի եւ որդիք Գադայ , զՅոր֊
դանան , եւ չիք ձեր բաժին ի Տեառնէ .
եւ օտարացուցանիցեն որդիք ձեր զոր֊
26 դիսն մեր [4]զի մի՛ պաշտիցեն զՏէր՝՝ ։ Եւ
ասացաք առնել այսպէս . շինել զսեղանս
զայս , ոչ վասն ողջակիզաց եւ ոչ վասն
27 զոհից , Այլ զի իցէ սա ի վկայութիւն
ընդ մեզ եւ ընդ ձեզ եւ ընդ որդիս մեր
յետ մեր , պաշտել զպաշտօն Տեառն ա֊
ռաջի նորա [5]ընծայիւք մերովք եւ պա֊
տարագօք մերովք եւ զոհիւք փրկու֊
թեանց մերոց՝՝, եւ ոչ ասասցեն որդիք
ձեր ցորդիս մեր վաղիւ , թէ Ոչ գոյ ձեր
28 բաժին ի Տեառնէ ։ Եւ ասացաք թէ լի֊
նիցի երբեք եւ խօսեսցին ընդ մեզ կամ
ընդ ազգս մեր վաղիւ , եւ ասիցեն թէ
Տեսէք զնմանութիւն սեղանոյ Տեառն
զոր արարին հարքն մեր , ոչ վասն ող֊
ջակիզաց եւ ոչ վասն զոհից , այլ վկա֊
յութիւն ընդ մեզ եւ ընդ ձեզ [1]եւ ի մէջ
29 որդւոց մերոց՝՝ ։ Այլ քաւ լիցի մեզ
ապստամբել ի Տեառնէ [6]այսօր , առ ի
չինելոյ մեզ սեղան զոհից կամ ողջակի֊
զաց կամ զոհից փրկութեան՝՝ արտա֊
քոյ քան զսեղան Տեառն Աստուծոյ մե֊
րոյ որ է առաջի խորանի նորա ։
30 Եւ իբրեւ լուաւ Փենեէս քահանայ եւ
ամենայն իշխանք ժողովրդեանն եւ հա֊
զարապետքն Իսրայելի որ էին ընդ նմա
զբանսն , զոր խօսեցան որդիքն Ռուբե֊
նի եւ որդիքն Գադայ եւ [7]կէս ցեղին՝՝
31 Մանասէի , հաճոյ թուեցաւ նոցա ։ Եւ
ասէ Փենեէս որդի Եղիազարու քահա֊
նայ [1]Տեառն ցորդիսն Ռուբենի եւ ցոր֊
դիսն Գադայ եւ [8]ցկէս ցեղին՝՝ Մանա֊
սէի , Այսօր գիտացաք թէ ընդ մեզ է
Տէր , զի ոչ յանցեայք առաջի Տեառն
զյանցուածս զայդ , զի ապրեցուցէք զոր֊
դիսն Իսրայելի ի ձեռաց Տեառն ։
32 Եւ դարձան Փենեէս քահանայ որդի
Եղիազարու եւ իշխանք տոհմիցն յորդ֊
ւոցն Ռուբենի եւ յորդւոցն Գադայ [1]եւ
ի կիսոյ ցեղէն Մանասէի՝՝ , յերկրէն Գա֊
ղաադու՝ յերկիրն Քանանու առ որդիսն
Իսրայելի , եւ ետուն նոցա պատգամսն ։
33 Եւ հաճոյ թուեցաւ բանն [9]որդւոցն Իս֊
րայելի , եւ օրհնեցին զԱստուած [10]որդ֊
ւոցն Իսրայելի . եւ խօսեցան ընդ որդիսն
Իսրայելի եւ ասեն մի՛ եւս ելանել ընդ
նոսա ի պատերազմ՝ սատակել զերկիր
որդւոցն Ռուբենի եւ որդւոցն Գադայ
[11]եւ կիսոյ ցեղին Մանասէի . եւ բնակե֊
34 ցան ինմա ։ Եւ անուանեաց Յեսու զսե֊
ղանն Ռուբենի եւ զԳադայ եւ զկէս ցեղին
Մանասէի եւ ասէ , Զի վկայութիւն է ի
մէջ նոցա , թէ Տէր՝ Աստուած է նոցա՝՝ ։

## ԳԼ. ԻԳ

1 Եւ եղեւ յետ աւուրցն բազմաց , յետ
հանգուցանելոյ Տեառն զԻսրայէլ յամե֊
նայն թշնամեաց նոցա շուրջանակի , եւ
Յեսու ծերացեալ եւ անցեալ զաւուրբք՝
2 Կոչեաց Յեսու միանգամայն զամենայն
որդիսն Իսրայելի եւ զծերակոյտս նոցա ,
եւ զիշխանս նոցա եւ զդատաւորս նոցա
եւ զդպիրս նոցա , եւ ասէ ցնոսա , Ես
3 ծերացայ եւ անցի զաւուրբք , Եւ դուք
ձեզէն տեսէք զամենայն զոր արար Տէր
Աստուած [12]մեր ընդ ամենայն ազգսն՝
[1]զոր երարձ՝՝ յերեսաց ձերոց . զի Տէր
Աստուած ինքնին տայր պատերազմ ընդ
4 ձեր ։ Եւ արդ տեսէք զի թողի ձեզ

[1] Յեբր. գ—ա—լ—ա—ւ [2] Եբր. ողջակէզս եւ նուէրս [3] Եբր. խաղաղութեան [4] Եբր. չերկնչել ի Տեառնէ [5] Եբր. ողջակիզօք մերովք, եւ պատարագօք մերովք եւ խաղաղականօք մերովք [6] Եբր. եւ դառնալ այսօր յետս ի Տեառնէ, շինել սեղան ողջակիզաց, հացի ընծայի եւ զոհի

[7] Եբր. որդիքն [8] Եբր. ցորդիսն [9] Եբր. յաչս որդւոցն [10] Եբր. որդիքն [11] Եբր. որ բնակէին ի նմա ։ (34) Եւ կոչեցին որդիքն Ռուբենի եւ որդիքն Գադայ զսեղանն Վկա—յու—թիւն, զի վկայ է նա ի մէջ մեր, եթէ Տէր է Աստուած [12] Եբր. ձեր

զազգսն զմնացեալսն զայնոսիկ ի ժա-
ռանգութիւն ըստ ցեղից ձերոց, ի Յոր-
դանանէ զամենայն ազգսն զոր սատա-
կեցի ի ծովէն մեծէ որ զառուցանէ
5 ի մտիցն արեւու։ Արդ Տէր Աստուած
[1]մեր նա սատակեսցէ զնոսա յերեսաց
ձերոց մինչեւ կորիցեն. [2]եւ արձակես-
ցէ ի վերայ նոցա զգազանս վայրենիս՝
մինչեւ սատակեսցէ զնոսա եւ զթա-
գաւորս նոցա յերեսաց ձերոց." եւ ժա-
ռանգեսջիք զերկիր նոցա որպէս խօսե-
6 ցաւ Տէր Աստուած [1]մեր ընդ [3]մեզ։ Արդ
զօրացարուք յոյժ զգուշանալ եւ առնել
զամենայն գրեալս ի գիրս օրինացն Մով-
սիսի, զի մի՛ խոտորիցիք ի նմանէ յաջ
7 կամ յահեակ. Գուցէ մտանիցէք յազգսն
մնացեալս յայնոսիկ. եւ անուանք դից
նոցա մի՛ անուանեսցին ի միջի ձերում,
մի՛ երդնուցուք ի նոսա, եւ մի՛ պաշտի-
ցէք զնոսա, եւ մի՛ երկիր պագանիցէք
8 նոցա. Այլ զհետ Տեառն Աստուծոյ [4]մե-
րոյ երթիջիք՝ որպէս արարէք մինչեւ
9 ցայսօր։ Եւ սատակեաց զնոսա Տէր յե-
րեսաց ձերոց զազգս մեծամեծս եւ զհզօրս,
եւ ոչ ոք եկաց ընդդէմ ձեր մինչեւ ցայս-
10 օր։ Մի այր ի ձէնջ հալածեաց զհազարս.
զի Տէր Աստուած ձեր ինքնին տայր
պատերազմ ընդ ձեր, որպէս խօսեցաւ
ընդ ձեզ։
11 Զգոյշ լինիջիք յոյժ անձանց ձերոց
12 սիրել զՏէր Աստուած ձեր։ Ապա թէ
դառնալով դառնայցէք եւ յաւելուցուք
յազգսն մնացեալս ի ձէնջ, եւ խնամու-
թիւնս առնիցէք ընդ նոսա, եւ խառ-
նակիցիք դուք ընդ նոսա եւ նոքա ընդ
13 ձեզ, Գիտելով գիտասջիք, զի ոչ եւս
յաւելուցու Տէր սատակել զազգսն զայ-
նոսիկ յերեսաց ձերոց. եւ լինիցին ձեզ
յորոգայթս եւ ի գայթակղութիւնս, [5]խոչ
ի գարշապարս" ձեր, եւ նետք յաչս ձեր,
մինչեւ կորնչիցիք յերկրէս բարութեան
14 զոր ետ ձեզ Տէր Աստուած ձեր։ Եւ ես
ահա երթամ այսօր զճանապարհ որպէս
ամենեքին որ են յերկրի. եւ ծանիջիք
յամենայն սրտէ ձերմէ եւ յամենայն
անձնէ ձերմէ, զի ոչ վրիպեաց բան մի
յամենայն [6]բանից զոր խօսեցաւ Տէր Աս-
տուած ձեր. այլ ամենայն ինչ եկն ե-
հաս ձեզ, եւ ոչ սխալեցաւ ի նոցանէ

[1]Եբր. ձեր [2]Յեբր. պակաս [3]Եբր. ձեզ [4]Եբր. ձերոյ [5]Եբր. խիթան ի կողս [6]Եբր. բանից բարեաց

15 բան մի։ Եւ եղիցի զոր օրինակ եկին ի
վերայ ձեր ամենայն բանք բարիք զոր
խօսեցաւ Տէր վասն ձեր, նոյնպէս ած-
ցէ Տէր ի վերայ ձեր զամենայն բանս
չարս, մինչեւ սատակեսցէ զձեզ յերկ-
րէս բարութեան զոր ետ ձեզ Տէր Աս-
16 տուած ձեր, Յանցանել ձեզ զուխտիւն
Տեառն Աստուծոյ ձերոյ զոր պատուի-
րեաց ձեզ, եւ յերթալ պաշտել զաս-
տուածս օտարս եւ երկիր պագանել նո-
ցա. եւ բարկանայցէ ձեզ Տէր, եւ կորն-
չիջիք վաղվաղակի յերկրէս բարութեան
զոր ետ ձեզ Տէր։

## Գլ. ԻԴ

1 Եւ ժողովեաց Յեսու զամենայն ցեղսն
Իսրայէլի [7]ի Սելով, եւ կոչեաց զամե-
նայն ծերսն Իսրայէլի եւ զիշխանս նո-
ցա եւ զդպիրս նոցա եւ զդատաւորս նո-
2 ցա, եւ կացին առաջի [8]Տեառն։ Եւ խօ-
սեցաւ Յեսու ընդ ամենայն ժողովրդեանն
եւ ասէ, Այսպէս ասէ Տէր Աստուած
Իսրայէլի, Յայնկոյս գետոյն պանդխտե-
ցան հարքն ձեր յառաջագոյն, Թարա՝
հայր Աբրահամու եւ հայր Նաքովրայ,
3 եւ պաշտեցին զաստուածս օտարս։ Եւ
առի ես զհայր ձեր զԱբրահամ յայնմ կող-
մանէ գետոյն, եւ առաջնորդեցի նմա
յամենայն երկրին Քանանացւոց, եւ բազ-
մացուցի զզաւակ նորա, եւ ետու նմա
4 զԻսահակ. Եւ ետու Իսահակայ զՅակոբ
եւ զԵսաւ. եւ ետու Եսաւայ զլեառնն
Սէիր ի ժառանգութիւն. եւ Յակոբ եւ
5 որդիք նորա իջին յԵգիպտոս։ [9]Եւ եղեն
անդ յազգ մեծ եւ բազում եւ հզօր.
եւ չարչարեցին զնոսա Եգիպտացիքն,
եւ եհար Տէր զԵգիպտացիսն նշանօք եւ
6 արուեստիւք՝ զոր արար ի նոսա. Եւ ա-
պա եհան զձեզ յԵգիպտոսէ, եւ մտէք"
ի ծովն, եւ պնդեցան Եգիպտացիքն զհետ
հարցն ձերոց կառօք եւ երիվարօք ի
7 ծովն Կարմիր։ Եւ [10]աղաղակեցաք առ
Տէր, եւ եդ զամպն եւ զմէգ" ի մէջ ձեր
եւ ի մէջ Եգիպտացւոց. եւ ած ի վերայ
նոցա զծովն եւ ծածկեաց զնոսա. եւ տե-
սին աչք ձեր զոր [11]արար Տէր" ընդ եր-
կրին Եգիպտացւոց. եւ էիք յանապատի

[7]Եբր. ի Սիւքեմ [8]Եբր. Աստուծոյ [9]Եբր. Եւ առաքեցի զՄովսէս եւ զԱհարոն. եւ հարի զԵգիպտոս որպէս արարի ի միջի նորա, եւ ապա հանի զձեզ. (6) Եւ հանի զհարս ձեր յԵգիպտոսէ, եւ եկիք [10]Եբր. աղաղակեցին առ Տէր եւ եդ խաւար [11]Եբր. արարի

8 անց զՀուրս բազումս։ Եւ ¹ած զձեզ
յերկիրն Ամովրհացւոց բնակելոց յայն-
կոյս Յորդանանու, եւ եկուն ընդ ձեզ
պատերազմ. եւ ²մատնեաց զնոսա
Տէր՝՝ ի ձեռս ձեր, եւ ժառանգեցէք զեր-
կիրն նոցա, եւ ³սատակեցէք զնոսա յե-
9 րեսաց ձերոց։ Եւ յարեաւ Բաղակ Սեպ-
փովրայ արքայ Մովաբու եւ ետ պա-
տերազմ ընդ Իսրայելի, եւ առաքեաց
կոչեաց զԲաղաամ որդի Բէովրայ նզո-
10 վել զձեզ. Եւ ոչ ⁴կամեցաւ Տէր Ա-
ստուած քո կորուսանել՝՝, եւ օրհնելով
օրհնեաց զձեզ, եւ ⁵ապրեցոյց զձեզ ի
ձեռաց նոցա, եւ մատնեաց զնոսա ի
11 ձեռս ձեր՝՝։ Եւ անցէք ընդ Յորդանան,
եւ եկիք յԵրիքով. եւ պատերազմեցան
ընդ ձեզ բնակիչք Երիքովի, Ամուրհա-
ցին եւ Քանանացին եւ Փերեզացին եւ
Խեւացին եւ Յեբուսացին եւ Քետացին
եւ Գերգեսացին, եւ ⁶մատնեաց զնոսա
12 ի ձեռս ձեր։ Եւ ⁷առաքեաց յառաջա-
գոյն քան զձեզ զձիաստացն, եւ մեր-
ժեաց զնոսա յերեսաց ձերոց՝ ⁸զերկոտա-
սան թագաւորս Ամովրհացւոց, ոչ սրով
13 քով եւ ոչ աղեղամբ քով. Եւ ⁹ետ
ձեզ Տէր՝՝ զերկիրս յորում ոչ վաստա-
կեցէք. եւ բնակեցէք ի քաղաքս զոր ոչ
շինեցէք, եւ յայգիս եւ ¹⁰ի ձիթենիս՝ զոր
ոչ տնկեցէք դուք, եւ ուտէք։
14 Եւ արդ երկերուք դուք ի Տեառնէ,
եւ պաշտեցէք զնա ուղղութեամբ եւ
արդարութեամբ. եւ ի բաց արարէք զաս-
տուածս օտարոտիս զոր պաշտեցին հարք
ձեր յայնկոյս Գետոյն եւ յԵգիպտոս, եւ
15 պաշտեցէք զՏէր։ Ապա թէ ոչ իցէ ձեզ
հաճոյ պաշտել զՏէր, ընտրեցէք այսօր
թէ զո՛ պաշտիցէք. զաստուածս հարցն
ձերոց որ յայնկոյս Գետոյն էին, թէ
զաստուածս Ամովրհացւոցն յորոց դուք
բնակեալ էք յերկրի նոցա. այլ ես եւ
տուն իմ պաշտեմ զՏէր, ¹¹զի սուրբ է՝՝
16 Պատասխանի ետուն ժողովուրդն՝ եւ
ասեն, Քաւ լիցի մեզ թողուլ զՏէր ¹¹Ա-
ստուած մեր՝՝ եւ պաշտել զաստուածս օ-
17 տարս. Զի Տէր Աստուած մեր նա եհան
զմեզ եւ զհարս մեր յերկրէն Եգիպտա-
ցւոց ի տանէ ծառայութեան, եւ արար
մեզ զնշանս մեծամեծս զայնոսիկ, եւ
պահեաց զմեզ յամենայն ճանապարհին
յորում գնացաք, եւ յամենայն ազգս ընդ
18 որ անցաք։ Եւ մերժեաց Տէր զԱմովրհա-
ցին եւ զամենայն ազգս բնակեալս յերկ-
րին յերեսաց մերոց. այլ եւ մեք պաշ-
տեսցուք զՏէր, զի նա է Աստուած մեր։
19 Եւ ասէ Յեսու ցժողովուրդն, Ոչ կա-
րէք դուք պաշտել զՏէր, զի ¹²սուրբ է՝՝,
եւ նա նախանձեալ ոչ ներիցէ մեղաց
20 եւ անօրէնութեանց ձերոց, Յորժամ
թողուցուք զՏէր, եւ պաշտիցէք զաս-
տուածս օտարս, եւ հասեալ ի վերայ՝
չարչարիցէ զձեզ, եւ ծախեսցէ զձեզ
փոխանակ բարեացն զոր արար ձեզ։
21 Եւ ասէ ժողովուրդն ցՅեսու, Ոչ այդ-
պէս, այլ զՏէր պաշտեսցուք։
22 Եւ ասէ Յեսու ցժողովուրդն, Ահա
դուք ձեզէն եղերուք վկայք անձանց
ձերոց, զի դուք ընտրեցէք զՏէր պաշ-
23 տել զնա. եւ ասեն, Վկայ եմք։ Եւ ա-
սէ, Արդ ի բաց արարէք ի ձէնջ զաս-
տուածս օտարոտիս, եւ ուղղեցէք զսիրտս
24 ձեր առ Տէր Աստուած Իսրայէլի։ Եւ ասէ
ժողովուրդն ցՅեսու, ԶՏէր Աստուած մեր
պաշտեսցուք եւ ձայնի նորա լուիցուք։
25 Եւ ուխտեաց Յեսու ուխտ ընդ ժո-
ղովրդեանն յաւուր յայնմիկ, եւ ետ նմա
օրէնս եւ դատաստանս ¹³ի Սելով առաջի
26 խորանին Աստուծոյ Իսրայէլի՝՝։ Եւ գրեաց
Յեսու զբանս զայսոսիկ ի գիրս օրինաց
Աստուծոյ. եւ առ վէմ մի մեծ եւ կանգ-
նեաց զնա ի ներքոյ բեւեկնոյն ¹⁴առաջի
27 Տեառն. Եւ ասէ Յեսու ցամենայն ժո-
ղովուրդն, Ահա վէմս այս եղիցի ¹⁵ձեզ
ի վկայութիւն, զի սա լուաւ զամենայն
խօսեցեալսն ի Տեառնէ զոր խօսեցաւ
ընդ ¹⁵ձեզ այսօր՝՝. եւ եղիցի սա ձեզ ի
վկայութիւն ¹⁶աւուրց յետնոց յորժամ՝՝
28 ստիցէք Տեառն Աստուծոյ ձերում։ Եւ
արձակեաց Յեսու զժողովուրդն, եւ գնաց
29 իւրաքանչիւր ի տեղի իւր։ ¹⁷Եւ պաշ-
տեաց Իսրայէլ զՏէր զամենայն աւուրս
Յեսուայ, եւ զամենայն աւուրս ծերոցն
որ ձգեցին զժամանակս ¹⁸ընդ Յեսուայ,
որք եւ տեսին՝՝ զամենայն գործս Տեառն
զոր արար յԻսրայէլ։

¹Եբր. ածի ²Եբր. մատնեցի զնոսա ³Եբր. սատակեցի ⁴Եբր. կամեցայ լսել Բաղաամու ⁵Եբր. ապրեցուցի զձեզ ի ձեռաց նորա ⁶Եբր. մատնեցի ⁷Եբր. առաքեցի ⁸Եբր. զերկուս ⁹Եբր. ետու ձեզ ¹⁰Եբր. ի ձիթենիս ¹¹Յեբր. պակաս

¹²Եբր. Աստուած սուրբ է նա ¹³Եբր. ի Սիւքեմ ¹⁴Եբր. որ առ սրբութեան ¹⁵Եբր. մեզ ¹⁶Եբր. դուցէ ¹⁷Այս համար յԵբրայական բնագրէն գայ զկնի 30 համարի։ ¹⁸Եբր. յետ Յեսուայ, եւ որ գիտէին

30 Եւ եղեւ յետ այսորիկ մեռանել Յե-
սուայ որդւոյ Նաւեայ ծառայի Տեառն՝
31 հարեւր եւ տասն ամաց. Եւ թաղեցին
զնա առ սահմանօք ժառանգութեան իւ-
րոյ ի Թամնաթսարա ի լերինն Եփրեմայ ի
հիւսիսոյ լերինն Գաաս։ [1]Եւ անդ ե-
դին ընդ նմա՝ ուր թաղեցին զնա՝ առ ի
յիշատակէ զսուրսն քարեղէնս, որով
թլփատեաց զորդիսն Իսրայէլի ի Գաղ-
գաղա, յորժամ եհան զնոսա յերկրէն
Եգիպտացւոց՝ որպէս հրամայեաց Տէր.
եւ անդ են մինչեւ ցայսօր ժամանակի։
32 Եւ զոսկերսն Յովսեփու հանին որ-
դիքն Իսրայէլի յԵգիպտոսէ, եւ թաղե-
ցին զնա ի [2]Սիկիմ, ի բաժնի ագարակին
զոր ստացաւ Յակոբ [3]յԱմորհացւոցն
բնակելոցն ի Սիկիմ [4]որոջայ հարիւ-
րոց, եւ ետ զայն Յովսեփայ ի բաժնի։

33 Եւ [5]եղեւ յետ այսորիկ վախճանել Ե-
ղիազարու քահանայի որդւոյ Ահարոնի,
եւ թաղեցաւ ի Գաբաաթ Փենեհէսի որդ-
ւոյ իւրում զոր ետ նմա ի լերինն Եփ-
րեմայ։ Յաւուրսն յայնոսիկ առեալ որդ-
ւոցն Իսրայէլի զտապանակ ուխտին Աս-
տուծոյ շրջեցուցանէին ընդ իւրեանս։
Եւ քահանայացաւ Փենեէս փոխանակ
Եղիազարու հօր իւրոյ, մինչեւ մեռաւ
եւ թաղեցաւ յիւրումն Գաբաաթ։
Եւ որդիքն Իսրայէլի գնացին յիւրա-
քանչիւր տեղիս իւրեանց, եւ յիւրաքան-
չիւր քաղաքս իւրեանց. եւ պաշտե-
ցին որդիքն Իսրայէլի զԱստարովն եւ
զԱստարոթ, եւ զաստուածս ազգացն
որ շուրջ զնոքօք։ Եւ մատնեաց զնոսա
Տէր ի ձեռս Եգղոմայ արքային Մովաբու,
եւ տիրեաց նոցա ամս ութեւտասն։

[1] Յէբր. պակասէ [2] Եբր. Սիւքեմ. այսպէս եւ այլուր [3] Եբր. յորդւոցն Եմմովրայ, հօր Սիւքեմայ. [4] Կամ, գառնեկանաց

[5] Եբր. վախճանեցաւ Եղիազար, որդի Ահարոնի, եւ թաղեցին զնա ի բլուրն Փենեէսի որդւոյ նորա, որ տուաւ նմա ի լերինն Եփրեմայ

# ԳԼՈՒԽՔ ԳՐՈՑ ԴԱՏԱՒՈՐԱՑ

# ԴԱՏԱՒՈՐՔ

## ԳԼՈՒԽ Ա.

1 ԵՒ եղեւ յետ վախճանելոյն Յեսուայ՝
հարցանէին որդիքն Իսրայէլի զՏէր
եւ ասէին, Ո՞ ելցէ մեզ առ Քանանա-
ցին առաջնորդ՝ պատերազմել ընդ նմա։
2 Եւ ասէ Տէր, Յուդա ելցէ. զի ետու
3 զերկիրն ի ձեռս նորա։ Եւ ասէ Յուդա
ցՇմաւոն ցեղբայր իւր, Ել ընդ իս ի վի-
ճակիս իմում, եւ տուցուք պատերազմ
ընդ Քանանացիսն. եւ եկից եւ ես ընդ
քեզ ի քում վիճակիդ. եւ գնաց ընդ նմա
4 Շմաւոն։ Եւ ել Յուդա, եւ ետ Տէր զՔա-
նանացին եւ զՓերեզացին ի ձեռս [1]նորա.
եւ եհար" զնոսա ի Բեզեկ տասն հազար ա-
5 րանց։ Եւ գտին զԱդոնիբեզեկ ի Բեզեկ,
եւ ետուն պատերազմ ընդ նմա. եւ հա-
6 րին զՔանանացին եւ զՓերեզացին։ Եւ
փախեաւ Ադոնիբեզեկ. եւ պնդեցան
զհետ նորա, եւ հասին նմա, եւ կտրե-
ցին [2]զծայրս ձեռաց նորա եւ զծայրս"
7 ոտից նորա։ Եւ ասէ Ադոնիբեզեկ, Եւ-
թանասուն թագաւորք ծայրատեալք
ձեռօք եւ ոտիւք էին, որ քաղէին զփշրանս
ի ներքոյ սեղանոյ իմոյ. որպէս ա-
րարի, նոյնպէս հատոյց ինձ Աստուած։ Եւ-
ածին զնա յԵրուսաղէմ, եւ անդ մեռաւ։
8 Եւ պատերազմէին որդիքն Յուդայ ընդ
Երուսաղեմի, եւ առին զնա, եւ հարին
զնա սրով սուսերի, եւ զքաղաքն այրե-
ցին հրով։
9 Եւ յետ այնորիկ իջին որդիքն Յուդայ
պատերազմել ընդ Քանանացւոյն բնակե-
լոյ ի լեռնակողմն եւ ի հարաւ եւ ի դաշ-
10 տավայրս։ Եւ գնաց Յուդա ի վերայ Քա-
նանացւոյն բնակելոյ ի Քեբրոն. [3]եւ ել
Քեբրոն ընդդէմ." եւ էր անուն Քեբ-
րոնի յառաջ՝ Կարիաթարբոկ [3]Սեփեր. եւ
հարին զՍեսի եւ զԱքիման եւ զԹոլմի։
11 [3]զծնունդս Ենակայ։" Եւ ելին անտի ի
վերայ բնակչացն Դաբիրայ. եւ անուն
Դաբիրայ էր յառաջագոյն Քաղաք Նա-
12 մակաց։ Եւ ասէ Քաղէբ, Որ ոք հարցէ
զքաղաքն Նամակաց եւ առցէ զնա, տաց
նմա զԱքսա զդուստր իմ կնութեան։
13 Եւ առ զնա Գոթոնիէլ որդի Կենեզի եղ-
բայր Քաղեբայ՝ կրտսեր քան զնա. եւ
ետ նմա Քաղէբ զԱքսա զդուստր իւր
14 կնութեան։ Եւ եղեւ ի գնալն նորա,
յորդորեաց զնա [3]Գոթոնիէլ խնդրել ի հօրէ
իւրմէ ագարակ. եւ [4]տրտնջեաց եւ ա-
ղաղակեաց յիշոյ անտի, եւ ասէ, Յերկիր
հարաւոյ ետուր զիս" ։ Եւ ասէ ցնա Քա-
15 ղէբ, Զի՞ է քեզ։ Եւ ասէ ցնա Աքսա,
Տուր ինձ օրհնութիւն, զի յերկիր հա-
րաւոյ ետուր զիս, եւ տացես ինձ զբօ-
սանս ջրոց։ Եւ ետ նմա Քաղէբ [3]ըստ
սրտի նորա" զբօսանս բարձանց, եւ զբօ-
սանս հովտաց։
16 Եւ որդիքն [3]Յոբաբայ Կինեցւոյ աներ-
բոյն Մովսիսի ելին ի քաղաքէն Արմա-
ւենեաց առ որդիսն Յուդայ ի յանապատն
Յուդայ, որ է ի հարաւոյ [3]Յուդայ, առ
զառիվայրին" Արադայ, եւ գնացին բնա-
17 կեցան ընդ ժողովրդեանն։ Եւ գնաց Յու-
դա ընդ Շմաւոնի եղբօր իւրոյ, եւ հա-
րին զՔանանացին բնակեալ ի Սեփաթ,
եւ նզովեցին զնա [3]եւ սատակեցին զնա".
եւ կոչեցին զանուն քաղաքին [5]Սատա-
18 կումն։ Եւ [3]ոչ ժառանգեաց Յուդա զԳա-
զա եւ զսահմանս նորա, եւ զԱսկաղոն
եւ զսահմանս նորա, եւ զԱկկարոն
եւ զսահմանս նորա, [3]եւ զԱզովտոս եւ
19 զանդաստանս նորա։" Եւ էր Տէր ընդ
Յուդայ, եւ ժառանգեաց զլեառնն, զի
ոչ կարացին [6]ժառանգել զբնակիչս հով-
տացն. զի [3]Ռեքաբ զատոյց զնոսա. եւ"
20 կառք երկաթիք էին նոցա։ Եւ ետուն
Քաղեբայ զՔեբրոն որպէս եւ խօսեցաւ
Մովսէս. [3]եւ ժառանգեաց անտի զերիս
քաղաքս որդւոցն Ենակայ," եւ եբարձ
անտի զերեսին որդիսն Ենակայ։
21 Եւ զՅեբուսացին զբնակեալն յԵրու-
սաղէմ ոչ [7]ժառանգեցին որդիքն Բե-

[1] Ոմնք. նոցա. եւ հարին  [2] Ոմնք. զբոյթս ձեռաց նորա եւ  [3] Ոմնք. պակաս

[4] Ոմնք. էջ յիշոյ անտի  [5] Ոմնք. Նզովք  [6] Ոմնք. վանել
[7] Ոմնք. վանեցին

նիամինի. եւ բնակեաց Յեբուսացին ընդ
որդիսն Բենիամինի յԵրուսաղէմ մինչեւ
ցայսօր։
22 Եւ ելին որդիքն Յովսեփու եւ նոք-
23 ւմանք ի Բեթէլ, եւ Տէր ընդ նոսա։ Եւ
[1]բանակեցան տունն Իսրայէլի ի Բեթէլ".
եւ անուն քաղաքին էր յառաջ Լուզա։
24 Եւ տեսին պահապանքն այր մի ելեալ
ի քաղաքէ անտի. [2]կալան զնա եւ ա-
սեն", Ցոյց մեզ զմուտ քաղաքիդ, եւ
25 արասցուք ընդ քեզ ողորմութիւն։ Եւ
եցոյց նոցա զմուտ քաղաքին. եւ հա-
րին զքաղաքն սրով սուսերի. եւ զայրն
26 եւ զազգատոհմն իւր արձակեցին։ Եւ
գնաց այրն յերկիրն ի Քետիմ, եւ շի-
նեաց անդ քաղաք, եւ կոչեաց զանուն
նորա Լուզա. եւ այն է անուն նորա մին-
27 չեւ ցայսօր։ Եւ ոչ ժառանգեաց Մա-
նասէ զԲեթսան [3]որ է Սկիւթուպօլիս",
եւ ոչ զդստերս նորա [3]եւ ոչ զանդաս-
տանս նորա", եւ ոչ զԹանաք եւ զդստերս
նորա, եւ ոչ զբնակիչսն Դովրայ [3]եւ ոչ
զշուրջ բնակեալսն զնովաւ" եւ ոչ
զդստերս նորա. [3]եւ ոչ զբնակիչս Բա-
ղակայ եւ ոչ զշուրջ բնակեալսն զնովաւ
եւ ոչ զդստերս նորա." եւ ոչ զբնակիչս
Յեբղաամայ եւ [3]ոչ զշուրջ բնակեալսն զնո-
վաւ եւ" ոչ զդստերս նորա. [4]եւ սկսաւ"
Քանանացին բնակել յերկրին յայնմիկ։
28 Եւ եղեւ իբրեւ զօրացաւ Իսրայէլ՝ եդ
զՔանանացին ընդ հարկաւ, եւ բառնա-
լով ոչ եբարձ զնա։
29 Եւ Եփրեմ ոչ եբարձ զՔանանացին
զբնակեալն ի Գազեր. եւ բնակեաց Քա-
նանացին ի մէջ նորա ի Գազեր, [3]եւ եղեւ
նմա հարկատու։"
30 Եւ Զաբուղոն ոչ եբարձ զբնակիչսն
Կեդրոնի եւ զբնակիչսն Ամանայ. եւ
բնակեաց Քանանացին ի մէջ նորա, եւ
եղեւ նմա հարկատու։
31 Եւ Ասեր ոչ եբարձ զբնակիչսն Ակքո-
վայ, [3]եւ եղեւ նմա հարկատու. եւ զբնա-
կիչսն Դովրայ," եւ զբնակիչսն Սիդո-
նի, եւ զբնակիչսն Աքլափայ, եւ զԱ-
քազիփ եւ զՆէփա եւ զԱփեկ եւ զՌոփբ.
32 Եւ բնակեաց Ասեր ի մէջ Քանանացւոյն
բնակչացն յերկրին. քանզի ոչ կարացին
բառնալ զնա։

33 Եւ Նեփթաղիմ ոչ եբարձ զբնակիչսն
Բեթսամիւսայ եւ ոչ զբնակիչսն Բեթա-
նաթայ. եւ բնակեաց Նեփթաղիմ ի մէջ
Քանանացւոյն բնակչացն յերկրին. եւ
բնակիչքն Բեթսամիւսայ եւ Բեթանաթայ
եղեն նմա հարկատուք։
34 Եւ նեղեաց Ամովրհացին զորդիսն Դա-
նայ ի լերինն, զի ոչ տային նոցա թոյլ
35 իջանել ի հովիտն։ Եւ [5]սկսաւ Ամովր-
հացին բնակել ի լերինն [6]Մուրսինատանի,
ուր արջք եւ աղուէսք ի Մուրտաստանսն"
եւ ի Սաղաղբին. եւ ծանրացաւ ձեռն Յով-
սեփայ ի վերայ Ամովրհացւոյն, եւ եղեն
36 նոցա հարկատուս. [7]Զի սահման Ամովր-
հացւոյն [3]Եդովմայեցին էր ի վերայ զառի-
վայրին Ակրաբիմայ ի Վիմէն եւ ի վեր։

Գլ. Բ

1 Եւ ել հրեշտակ Տեառն ի Գաղգաղայ
ի Կլաթմոն, [8]եւ ի Բեթէլ եւ ի տունն
Իսրայէլի, եւ ասէ ցնոսա, Այսպէս ասէ
Տէր. Տէր եհան" զձեզ յԵգիպտոսէ, եւ [9]ած
զձեզ յերկիրդ՝ [10]յոր երդուաւ հարցն ձերոց
տալ ձեզ, եւ ասէ ցձեզ, Ոչ" ցրեցից
2 զուխտն իմ որ ընդ ձեզ յաւիտեան։ Եւ
մի՛ գնիցէք ուխտ ընդ բնակիչս երկրիդ
այդորիկ. [3]եւ մի՛ ընդ գիս նոցա, եւ մի՛
երկիր պագանիցէք նոցա. այլ զկռոչեալս
նոցա խորտակեսջիք, եւ" զսեղանս նո-
ցա կործանեսջիք. եւ ոչ լուարուք ձայ-
3 նի իմում. [11]քանզի արարէք զայն։ Եւ
ասացի թէ Ոչ [3]յաւելից փոխել զժողո-
վուրդն զոր յաւելի սատակել, եւ ոչ"
բարձից զնոսա յերեսաց ձերոց. եւ եղի-
ցին ձեզ ի վտանգս, եւ զիք նոցա եղի-
4 ցին ձեզ ի գայթակղութիւն։ Եւ եղեւ
իբրեւ խօսեցաւ հրեշտակն Տեառն զբանս
զայսոսիկ առ ամենայն որդիսն Իսրայէ-
լի, ամբարձին ժողովուրդքն զձայնս իւր-
5 եանց եւ լային. Եւ կոչեցաւ անուն
տեղւոյն այնորիկ Լալօնք.
եւ զոհեցին անդ Տեառն։
6 Եւ արձակեաց Յեսու զժողովուրդն.
եւ գնացին որդիքն Իսրայէլի [3]յիւրա-
քանչիւր տուն իւր եւ" յիւրաքանչիւր
ժառանգութիւն իւր՝ ժառանգել զերկիրն։
7 Եւ ծառայեաց ժողովուրդն Տեառն զա-
մենայն աւուրս Յեսուայ եւ զամենայն
աւուրս ծերոցն, որ մնացին երկայնա-

[1]Եբր. տունն Յովսեփայ ետ լրտեսել զԲեթէլ
[2]Եբր. եւ ասեն ցնա [3]Եբր. պակասէ [4]Եբր. և
ոչ զբնակիչս Մակեդդովայ, եւ ոչ զդստերս
նորա. եւ յամառեցաւ

[5]Եբր. յամառեցաւ [6]Եբր. Հարէս, յԱյեղոն
[7]Եբր. Եւ [8]Եբր. եւ ասէ. Հանի [9]Եբր. ածի [10]Եբր.
զոր երդուայ հարցն ձերոց, եւ ասացի, Ոչ
[11]Եբր. զի՞

*կեացք եղեն [1]ընդ Յեսուայ, որ գիտակ*
*լեալ էին ամենայն մեծամեծ գործոցն*
8 *Տեառն զոր արար յԻսրայէլ։ Եւ վախճանե-*
*ցաւ Յեսու որդի Նաւեայ ծառայ Տեառն,*
9 *որդի հարեւր եւ տասն ամաց. Եւ թա-*
*ղեցին զնա ի լերինն ժառանգութեան*
*նորա, ի Թամնաթարէս՝ ի լերինն Եփրե-*
10 *մի ի հիւսիսոյ լերինն Գայասու։ Եւ ա-*
*մենայն ազգն այն յաւիտեան առ հարս իւր-*
*եանց. յարեաւ այլ ազգ յետ նոցա որ ոչ*
*ճանաչէին զՏէր եւ ոչ զգործսն զոր*
*արար [2]ի մէջ Իսրայէլի։*
11 *Եւ արարին որդիքն Իսրայէլի չար ա-*
*ռաջի Տեառն, եւ պաշտեցին զԲահա-*
12 *ղիմ. Եւ թողին զՏէր Աստուած հարցն*
*իւրեանց, որ եհան զնոսա յերկրէն Ե-*
*գիպտացւոց, եւ գնացին զհետ աստուա-*
*ծոց օտարաց, աստուածոց ազգացն որ*
*շուրջ զնոքօք, եւ երկիր պագին նոցա,*
13 *եւ բարկացուցին զՏէր. Եւ թողին զնա*
*եւ պաշտեցին զԲահաղ եւ զԱստարովթ։*
14 *Եւ բարկացաւ սրտմտութեամբ Տէր Իս-*
*րայէլի, եւ մատնեաց զնոսա Տէր ի ձեռս*
*աւարառուացն, եւ [3]աւերեցին զնոսա.*
*եւ ետ զնոսա Տէր ի ձեռս թշնամեաց*
*իւրեանց շուրջանակի, եւ ոչ կարացին*
*կալ ընդդէմ թշնամեաց [4]իւրեանց ամե-*
15 *նեցունց՝ ընդ որս սուանկեցան։ Եւ" ձեռն*
*Տեառն էր նոցա ի չարութիւն, որպէս*
*եւ խօսեցաւ Տէր եւ որպէս երդուաւ*
*Տէր, եւ [5]նեղեաց զնոսա" յոյժ։*
16 *Եւ յարոյց նոցա Տէր դատաւորս, եւ*
*[6]փրկեաց զնոսա Տէր" ի ձեռաց աւարա-*
17 *ռուաց նոցա։ Սակայն եւ [7]նոցա ոչ*
*լուան. զի պոռնկեցան զհետ աստուածոց*
*օտարաց, եւ երկիր պագին նոցա, [8]եւ*
*բարկացուցին զՏէր. եւ" խոտորեցան*
*վաղվաղակի ի ճանապարհէն ընդ որ գնա-*
*յին հարքն նոցա՝ լսել պատուիրանաց*
18 *Տեառն, եւ ոչ արարին այնպէս։ Եւ յոր-*
*ժամ յարոյց նոցա Տէր դատաւորս, եւ*
*էր Տէր ընդ դատաւորին. եւ փրկեաց*
*զնոսա ի ձեռաց թշնամեաց նոցա զամե-*
*նայն աւուրս դատաւորին, զի [9]մխիթա-*
*րեցաւ Տէր ի հեծութենէ" նոցա յերեսաց*
*պաշարողացն նոցա որ չարչարէին զնո-*
19 *սա։ Եւ լինէր իբրեւ մեռանէր դատա-*
*ւորն, դառնային միւսանգամ եղծանել*
*առաւել քան զհարս իւրեանց, երթալ*
*զհետ աստուածոց օտարաց, պաշտել*
*զնոսա եւ երկիր պագանել նոցա. եւ ոչ*
*ընկեցին ի բաց [10]զարուեստս իւրեանց,*
*եւ ոչ հաստան ի խիստ ճանապարհաց իւր-*
20 *եանց։ Եւ բարկացաւ սրտմտութեամբ*
*Տէր Իսրայէլի, եւ ասէ, Փոխանակ զի*
*եթող ազգդ այդ զուխտ իմ զոր պա-*
*տուիրեցի հարց դոցա եւ ոչ լուան ձայնի*
21 *իմում, Եւ ես ոչ յաւելից բառնալ զայր*
*յերեսաց նոցա, յազգացն զոր եթող Յե-*
22 *սու [11]որդի Նաւեայ. Եւ եթող փորձել*
*նովաւ" զԻսրայէլ, եթէ զգուշանայցե՞ն*
*ճանապարհին Տեառն գնալ ընդ նա, զոր*
*օրինակ զգուշացան հարքն նոցա, եւ ե-*
23 *թէ ոչ։ Եւ եթող Տէր զազգսն զայնո-*
*սիկ չբառնալ զնոսա վաղվաղակի, եւ*
*ոչ մատնեաց զնոսա ի ձեռս Յեսուայ։*

ԳԼ. Գ

1 **Ե**ւ *այս ազգք են զորս եթող [12]Յեսու*
*փորձել նոքօք զԻսրայէլ, զամենեսին որ ոչ*
*գիտէին զամենայն պատերազմունս Քա-*
2 *նանացւոց. Բայց [13]վասն ազգաց որդ-*
*ւոցն Իսրայէլի՝ ուսուցանել նոցա պա-*
*տերազմ. [14]սակայն եւ" որ յառաջագոյն*
3 *քան զնոսա էին՝ ոչ գիտէին. Զհինգ նա-*
*խարարութիւնս [15]այլազգեաց, եւ զա-*
*մենայն Քանանացին եւ զՍիդոնացին եւ*
*զԽեւացին զբնակեալն ի Լիբանան ի լեռ-*
*նէն Բաղհերմոնեայ մինչեւ [16]ցԼաբովե-*
4 *մաթ։ Եւ եղեւ ի փորձել նոքօք զԻս-*
*րայէլ, գիտել եթէ լսիցե՞ն պատուիրա-*
*նացն Տեառն զորս պատուիրեաց հարցն*
*նոցա ի ձեռն Մովսիսի։*
5 *Եւ որդիքն Իսրայէլի բնակեցին ի մէջ*
*Քանանացւոյն եւ Քետացւոյն եւ Ամովր-*
*հացւոյն եւ Փերեզացւոյն եւ Խեւացւոյն*
*եւ Յեբուսացւոյն [8]եւ Գերգեսացւոյն"։*
6 *Եւ առին զդստերս նոցա իւրեանց ի կա-*
*նայս, եւ զդստերս իւրեանց ետուն ուս-*
*տերաց նոցա, եւ պաշտեցին զդիս նո-*
7 *ցա։ Եւ արարին որդիքն Իսրայէլի չար*
*առաջի Տեառն, եւ մոռացան զՏէր Աս-*
*տուած իւրեանց եւ պաշտեցին զԲահաղ*
8 *եւ [17]զանտառսն։ Եւ բարկացաւ սրտմտու-*

[1] Եբր. յետ [2] Եբր. վասն [3] Եբր. յաւարի առին [4] Եբր. իւրեանց։ (15) Յո եւ երթային [5] Եբր. նեղութիւն եղեւ նոցա [6] Եբր. փրկեցին զնոսա [7] Եբր. դատաւորաց իւրեանց [8] Յեբր. պակասէ [9] Կամ, սարջացաւ Տէր ընդ հեծութիւն

[10] Եբր. զգործս [11] Եբր. ի մեռանելն, (22) Առ ի փորձելոյ նոքօք [12] Եբր. Տէր [13] Եբր. առ ի գիտել [14] Եբր. մանաւանդ զի [15] Այլազգի նշանակէ աստ, որպէս եւ այլ բազում անգամ, Փղշտացի։ [16] Այսինքն՝ ի մուտս Եմաթայ [17] Եբր. Աշերայ. (տե՛ս Ելից ԼԴ. 13։)

թեամբ Տէր Իսրայելի, եւ մատնեաց
զնոսա ի ձեռս Քուսարսաթեմայ արքա-
յին Ասորւոց Միջագետաց. եւ ծառա-
յեցին նմա ամս ութ։
9 Եւ աղաղակեցին որդիքն Իսրայելի առ
Տէր. եւ յարոյց Տէր փրկիչ Իսրայելի,
եւ ետ նոցա զԳոթոնիէլ որդի Կենե-
զեայ, զեղբայր Քաղեբայ՝ կրտսեր քան
10 զնա. եւ [1]լուաւ նոցա։" Եւ եղեւ ի նմա
Հոգի Տեառն, եւ դատեաց զԻսրայէլ.
եւ ել ի պատերազմ [2]ընդ Քուսարսաթե-
մայ". եւ մատնեաց Տէր ի ձեռս նորա
զՔուսարսաթեմ արքայ Ասորւոց. եւ
սաստկացաւ ձեռն նորա ի վերայ Քու-
11 սարսաթեմայ։ Եւ դադարեաց երկիրն
ամս քառասուն. եւ մեռաւ Գոթոնիէլ
որդի Կենեզի։
12 Եւ յաւելին որդիքն Իսրայելի առնել
չար առաջի Տեառն. եւ զօրացոյց Տէր
զԵգղոմ արքայ Մովաբու ի վերայ Իսրա-
յելի՝ վասն առնելոյ նոցա չար առաջի
13 Տեառն։ Եւ ժողովեաց ի վերայ նոցա
զամենայն որդիսն Ամոնայ եւ զԱմաղէկ.
եւ չոգաւ եհար զԻսրայէլ, եւ ժառան-
14 գեաց զքաղաքն Արմաւենեաց։ Եւ ծա-
ռայեցին որդիքն Իսրայելի Եգղոմայ ար-
քայի Մովաբու ամս ութուտասն։
15 Եւ աղաղակեցին որդիքն Իսրայելի առ
Տէր. եւ յարոյց նոցա Տէր փրկիչ զԱ-
ւովդ որդի Գերեայ՝ [3]զորդի առն Յեմի-
նեցւոյ, զերկոցունց ձեռաց աջողակն".
եւ առաքեցին որդիքն Իսրայելի ի ձեռն
նորա պատարագս Եգղոմայ արքայի Մո-
16 վաբու։ Եւ արար իւր Աւովդ սուր երկ-
սայրի՝ թզաւ յերկայնութիւն, եւ եդ յա-
ջոյ ազդեր իւրում ընդ սաստակաւն,
17 [2]եւ գնաց։" Եւ մատոյց զպատարագսն
Եգղոմայ արքայի Մովաբու. եւ Եգղոմ
18 էր այր յոյժ յոյժ։ Եւ եղեւ իբրեւ վախ-
ճանեաց Աւովդ մատուցանել զպատա-
րագսն, եւ արձակեաց զպատարագա-
19 բարձսն, Եւ [4]Եգղոմ դարձաւ [5]ի դրօշե-
լոցն [6]հանդերձ Գաղգաղաւն". եւ ասէ
Աւովդ, Բանք ինչ են ինձ ընդ քեզ լռե-
լեայն, արքայ, եւ ասէ Եգղոմ. Լռեա
լեր։ [2]Եւ ասէ ցամենեսին, Ի բաց գնա-
ցէք." եւ ելին արտաքս որ զնովաւն կա-
20 յին. [7]Եւ նա" նստէր յամարանոցի ի վեր-
նատանն իւրում միայն առանձինն. եւ
ասէ Աւովդ, Պատգամ Աստուծոյ է իմ
առ քեզ, արքայ։ Եւ յարեաւ Եգղոմ
21 [8]յաթոռոյն մերձ առ նա։ Եւ եղեւ ընդ
յառնելն նորա" ձգեաց Աւովդ զձեռն իւր
զձախ, եւ առ զսուրն յաջոյ ազդերէ
22 իւրմէ, եւ եհար ի կշտի Եգղոմայ, [9]Արկ
եւ զերախակալն եւս զհետ վիրին. եւ ար-
գել ճարպն զվիրաբերանն", զի ոչ ձգեաց
23 ի բաց զսուրն ի կշտէ նորա։ [10]Եւ ել ի
պատշգամն, եւ անց ընդ վանդակա-
պատսն, եւ" փակեաց զդուրս վերնա-
24 տանն ընդդէմ նորա եւ աղխեաց. Եւ
ինքն ել գնաց. եւ ծառայքն նորա մտին
եւ տեսին, եւ ահա դուրք վերնատանն
փակեալ էին, եւ ասեն, Գուցէ յաթոռն
25 նստիցի ի պէտս ի սենեկին։ Եւ կացին
մնացին ամաչեցեալք. եւ ահա ոչ [2]ոք
էր որ" բանայր զդուրս վերնատանն. եւ
առին զբանալին եւ բացին, եւ ահա
տէրն իւրեանց անկեալ կայր մեռեալ ի
26 գետնի։ Եւ Աւովդ զերծաւ [2]ի Սիրով-
թա՝ մինչ նոքա զաղմկաւն էին. [2]եւ ոչ
ոք էր որ փոյթ առնէր զնմանէ," եւ նա
անց [11]առ դրօշելովքն", եւ զերծաւ ան-
կաւ ի Սերովթա։
27 Եւ եղեւ իբրեւ եկն Աւովդ [2]յերկիրն
Իսրայելի", եհար փող ի լերինն Եփրե-
մայ. եւ իջին ընդ նմա որդիքն Իսրայելի
ի լեռնէ անտի, եւ ինքն առաջի նոցա։
28 Եւ ասէ ցնոսա, Իջէք զկնի իմ, զի
մատնեաց Տէր [2]Աստուած մեր" զթշնա-
միս [12]մեր զՄովաբացիս ի ձեռս [12]մեր.
եւ իջին զկնի նորա, եւ կալան նախ
զանցս Յորդանանու ի Մովաբայ, եւ ոչ
29 թողին մարդոյ անցանել։ Եւ հարին ի
Մովաբայ յաւուր յայնմիկ իբրեւ տասն
հազար արանց, զամենայն պատերազ-
մողս ի նոցանէ եւ զամենայն այր զօրու-
թեան, եւ ոչ ապրեցաւ եւ ոչ մի այր։
30 Եւ վանեցաւ Մովաբ յաւուր յայնմիկ
ընդ ձեռամբ Իսրայելի, եւ դադարեաց
երկիրն ամս ութսուն. [2]եւ դատեաց զնո-
սա Աւովդ մինչեւ մեռաւ։"
31 Եւ յետ նորա յարեաւ Սամեգար որդի
Անաթայ, եւ եհար յայլազգեացն վեց
հարեւր այր [13]մաճով արօրոյ, եւ առ

[1] Եբր. փրկեաց զնոսա [2] Յեբր. պակաս [3] Եբր. Բենիամինեան, որոյ փակեալ էր աջոյ ձեռն [4] Եբր. ինքն [5] Կամ, ի քարահատէն [6] Եբր. մերձ ի Գաղգաղա [7] Եբր. Եւ Աւովդ մատեաւ առ նա, եւ նա

[8] Եբր. յաթոռոյն (21) Եւ [9] Եբր. Եւ եմուտ երախակալն եւս զհետ երկաթոյն, եւ պատեցաւ ճարպն զերկաթովն [10] Եբր. եւ հեղաւ աղբ նորա, (23) Եւ ել Աւովդ ի պատշգամն, եւ [11] Կամ, ըստ քարահատն [12] Եբր. ձեր [13] Եբր. խթանաւ եզին

յաւարի արջառ եւ ոչխար բազում յոյժ ,
թող զորթս արջառոց". եւ փրկեաց նա
զԻսրայէլ ։

ԳԼ. Դ

1 Եւ յաւելին որդիքն Իսրայէլի առնել չար
առաջի Տեառն . եւ [1]Աւովդ մեռաւ ։
2 Եւ մատնեաց զնոսա Տէր ի ձեռս Յա-
բինայ արքայի Քանանացւոց , որ թա-
գաւորեաց յԱսովր . եւ իշխան զօրու նո-
րա Սիսարա , եւ նա բնակէր յԱրիսովթ
3 ազգաց ։ Եւ աղաղակեցին որդիքն Իս-
րայէլի առ Տէր . զի ինն հարիւր կառք
երկաթիք էին նորա , եւ նա նեղէր զԻս-
րայէլ սաստիկ ամս քսան ։
4 Եւ Դեբովրա կին մարգարէ , կին Լա-
փիդովթայ , նա դատէր զԻսրայէլ ի ժա-
5 մանակին յայնմիկ ։ Եւ ինքն բնակեալ
էր [2]ընդ արմաւենեաւն" ի մէջ Ռամայ
եւ ի մէջ Բեթելայ ի լերինն Եփրեմայ ,
եւ ելանէին որդիքն Իսրայէլի առ նա ի
6 դատաստան ։ Եւ առաքեաց Դեբովրա եւ
կոչեաց զԲարակ զորդի Աբինէեմայ ի
Կադեսայ Նեփթաղիմի , եւ ասէ ցնա ,
Ո՞չ ապաքէն հրաման ետ քեզ Տէր Աս-
տուած Իսրայէլի , [3]եւ երթիցես" ի լեառն
Թաբովր , եւ առցես ընդ քեզ տասն հա-
զար արանց յորդւոցն Նեփթաղիմայ եւ
7 յորդւոցն Զաբուղոնի . Եւ [4]ածից ընդ"
քեզ ի հեղեղատն Կիսոնի , ի վերայ Սի-
սարայ իշխանի զօրուն Յաբինայ , եւ
զօրաց նորա եւ կառաց նորա , եւ մատ-
8 նեցից զնա ի ձեռս քո ։ Եւ ասէ ցնա Բա-
րակ , Եթէ երթիցես ընդ իս՝ երթայց ,
եւ եթէ ոչ երթիցես ընդ իս՝ ոչ երթայց .
[5]քանզի ոչ գիտեմ զօրն յորում աջողես-
9 ցէ Տէր զհրեշտակ իւր ընդ իս" Եւ ասէ
ցնա Դեբովրա , Երթալով երթայց ընդ
քեզ . բայց գիտասջիր , զի ոչ քո լիցի
քաջութիւն ի ճանապարհին զոր երթա-
ցես , քանզի ի ձեռն կնոջ մատնեսցէ Տէր
զՍիսարա ։ Եւ յարեաւ Դեբովրա , եւ
10 գնաց ընդ Բարակայ [6]ի Կադէսայ ։ Եւ
պատուէր ետ Բարակ Զաբուղոնի եւ
Նեփթաղիմի" ի Կադէս . եւ ելին զհետ
նորա տասն հազար արանց . եւ ընդ նմա
11 եւ Դեբովրա ։ Եւ [7]մերձաւորք Կինեցւոյն
մեկնեցան" ի Կինեայ՝ յորդւոցն Յոբա-

[1] Եբր. Աւովդ [2] Եբր. ընդ արմաւենեաւն Դեբովրայ
[3] Եբր. Ե. առէ. Երթ և եղ [4] Եբր. ձգեցից առ [5] Յեբր. պակասի [6] Եբր. ի Կադէս . (10) Եւ կոչեաց Բարակ զԶաբուղոն եւ զՆեփթաղիմ [7] Եբր. Քաբեր Կինեցի մեկնեալ էր

րայ աներայն Մովսիսի , եւ [8]եհար զխո-
րան իւր առ կաղնեաւն [9]հանգուցելոցն՝
որ է մերձ ի Կադէս ։
12 Եւ տուգ եղեւ Սիսարայ եթէ ել Բա-
րակ որդի Աբինէեմայ ի լեառն Թաբովր ։
13 Եւ գումարեաց Սիսարա զամենայն կառս
իւր , ինն հարիւր կառս երկաթեղէնս , եւ
զամենայն զօրն որ ընդ իւր յԱրիսովթայ
ազգաց՝ ի հեղեղատն Կիսոնի ։
14 Եւ ասէ Դեբովրա ցԲարակ , Արի , զի
այս օր է՝ յորում մատնեաց Տէր զՍի-
սարա ի ձեռս քո . զի ահա Տէր է ա-
ռաջի քո ։ Եւ էջ Բարակ ի լեռնէն Թա-
բովրայ , եւ տասն հազար արանց զհետ
15 նորա ։ Եւ զարհուրեցոյց Տէր զՍիսարա ,
եւ զամենայն կառս նորա եւ զամենայն
բանակն նորա սրով սուսերի առաջի Բա-
րակայ . եւ էջ Սիսարա ի կառաց իւրոց ,
16 եւ փախեաւ հետիոտս ։ Եւ Բարակ զհետ
մտեալ երթայր զկնի կառացն , եւ զհետ
բանակին մինչեւ [10]յանտառն ազգաց . եւ
անկաւ ամենայն բանակն Սիսարայ սրով
սուսերի , եւ ոչ մնաց եւ ոչ մի ։
17 Եւ Սիսարա մեկնեցաւ գնաց հետիոտս
ի խորանն Յայելի կնոջ Քաբերայ Կինեց-
ւոյ . քանզի խաղաղութիւն էր ի մէջ
Յաբինայ արքայի Ասովրայ եւ ի մէջ տանն
18 Քաբերայ Կինեցւոյ ։ Եւ ել Յայել ընդ
առաջ Սիսարայ , եւ ասէ ցնա , Խոտո-
րեաց առ իս , տէր իմ , խոտորեաց , եւ
մի՛ երկնչիր ։ Եւ խոտորեցաւ առ նմա
ի խորանն . եւ ծածկեաց զնա ընդ փեղ-
19 կիւք նորա ։ Եւ ասէ ցնա Սիսարա , Ար-
բո ինձ սակաւ մի ջուր , զի ծարաւի եմ ։
Եւ եբաց զտիկ կաթինն եւ արբոյց նմա .
20 եւ ծածկեաց զերեսս նորա ։ Եւ ասէ ցնա
Սիսարա , Կաց դու առ դրան խորանիդ ,
եւ եղիցի եթէ եկեսցէ ոք առ քեզ եւ
հարցցէ եւ ասասցէ ոք ցքեզ , եթէ է՞
21 ոք այդր այր , ասասցես թէ Ոչ է ։ Եւ
[5]ծածկեաց զնա ընդ փեղկիւքն նորա ,
եւ" առ Յայել կին Քաբերայ զցից խո-
րանին , եւ կալաւ զուռն ի ձեռին իւ-
րում , եւ եմուտ մեղմով առ նա , եւ բա-
խեաց զցիցն ընդ ծամելիս նորա եւ վար-
սեաց ընդ գետինն . եւ նա [11]տապալեցաւ
22 ի մէջ ոտից նորա եւ եհան զոգի" ։ Եւ
ահա Բարակ պնդեալ զայր զհետ Սիսա-
րայ . եւ ել Յայել ընդ առաջ նորա եւ

[8] Եբր. հարեալ էր [9] Եբր. ի Սահանանիմ [10] Եբր. յԱրիսովթ [11] Եբր. թմբրեալ էր եւ խոնջեալ , եւ մեռաւ ։

աստ՝ ցնա , Եկ այսր եւ ցուցից քեզ զայրն
զոր դու խնդրես ։ Եւ եմուտ առ նա .
եւ ահա Սիսարա կայր անկեալ մեռեալ ,
եւ ցիցն ի ծամիկոջ նորա ։
23 Եւ կործանեաց [1]Տէր Աստուած յաւուր
յայնմիկ զՅաբին արքայ Քանանացւոց
24 առաջի որդւոցն Իսրայէլի ։ Եւ ձեռն որդ-
ւոցն Իսրայէլի երթալով երթայր խստա-
ցեալ ի վերայ Յաբինայ արքային Քանա-
նացւոց մինչեւ սատակեցին [2]զնոսա ։

## Գլ. Ե

1 Եւ օրհնեաց Դեբովրա եւ Բարակ որդի
Աբինէեմայ յաւուր յայնմիկ , եւ ասեն ,
2 [3]Ի սկսանել զօրավարացն Իսրայէլի՛ մտա-
դիւրութեամբ ժողովրդեանն՞ օրհնեցէք
3 զՏէր ։ Լուարուք , թագաւորք , եւ ունկնդիր
լերուք , նախարարք . ես Տեառն երգեցից
եւ սաղմոս ասացից [4]Աստուծոյ Իսրայե-
4 լի ։ Տէր , յելանել քո ի Սէիրայ եւ ի չուել
քում յանդաստանացն Եդովմայ՝ երկիր
շարժեցաւ եւ երկինք [5]խռովեցան , եւ
5 ամպք ցօղեցին ջուր ։ Լերինք շարժեցան
յերեսաց [6]Տեառն Եղովայ Սինայի,՞ յերեսաց
6 Տեառն Աստուծոյ Իսրայէլի ։ Յաւուրս
Սամեգարայ որդւոյ Անաթայ՝ յաւուրս
Յայէլի պակասեցին [7]թագաւորք , եւ
[8]գնացին ընդ շաւիղս , գնացին՞ ընդ ճա-
7 նապարհս կամակորս ։ Պակասեցին [9]փա-
րաւոնք բնակեալք ի մէջ Իսրայէլի ,
պակասեցին , մինչեւ յարեաւ Դեբովրա ,
8 մինչեւ յարեաւ մայր Իսրայէլի ։ [10]Ցան-
կացան իբրեւ զարեղէն նկանակ աս-
տուածոց օտարաց նոցուց . յայնժամ
պատերազմեցան քաղաքք իշխանաց ,
ծածկութեամբ նորոց գեղարդանց , քա-
ռասուն հազար այր՞ ի մէջ Իսրայէլի ։
9 Սիրտ իմ ի վերայ [11]կարգելոցն Իսրայե-
լի . զօրաւորք ժողովրդեանն՞, օրհնեցէք
10 զՏէր ։ [12]Հեծեալք յերիվարս ի մէջօրէի ,
եւ սպիտակաց , երթեալք յատեանս ա-
11 տենակալաց ։ Տուք ձայն բարբառոյ
հուսկածուաց ի մէջ ցնծացելոց . անդ
տացեն արդարութիւն Տեառն . զար-
դարութիւն զօրացոյց՞ ի մէջ Իսրայե-
լի . յայնժամ էջ ի քաղաքս ժողովուրդ
12 Տեառն ։ Զարթիր , զարթիր , Դեբովրա ,
[1]զարթո զբիւրաւորս հանդերձ ժողովր-
դեամբ.՞ զարթիր , զարթիր , խօսեաց եր-
գովք . զօրացեալ յարիցես, Բարակ . գե-
րեայես զգերութիւն քո , որդի Աբինէե-
13 մայ ։ [13]Յայնժամ մեծացաւ զօրութիւն
նորա . Տէր ընկրկեաց ինձ զզօրագոյնս
14 քան զիս ։ Ժողովուրդ Եփրեմայ պատ-
ժեաց զնոսա ի հովիտն . եղբայր քո
Բենիամին՝ քոյին ժողովուրդ . յինէն ի
Մաքիր իջին խուզարկուք , եւ ի Զաբու-
ղոնէ զօրացուցիչք՝ գաւազանաւ պատ-
15 մութեան դպրի ։ Եւ զօրավարք Իսա-
քարու ընդ Դեբովրայ եւ ընդ Բարակայ .
եւ այս Բարակ ի հովիտն տարածեաց
զոտս իւր . ի բաժինս Ռուբենի մեծա-
16 մեծ ճշգութիւնք սրտի ։ Ընդէ՞ր նստի-
ցես ի մէջ Մոսփաթեմայ , լսել զշաչիւնս
սպառնապողաց , անցանել ի կողմն Ռու-
բենի ։ Մեծամեծ յարուցեալ կան հետա-
17 զօտութիւնք սրտից ։ Գադ յայնկոյս Յոր-
դանանու բնակեաց . եւ Դան , ընդէ՞ր
բնաւ պանդխտիցես ի նաւս՞ . Ասեր՝
բնակեաց առ ծովեզերբ ծովուց , եւ ի
18 կիրճս նորա բնակեսցէ ։ Զաբուղոն ժո-
ղովուրդ անձնանախատ ի մահ , եւ Նեփ-
19 թաղիմ՝ ի բարձունս ագարակի ։ Հասին
թագաւորք եւ ճակատեցան . յայնժամ
տագնապեցան թագաւորք Քանանացւոց
ի Թանաք ի վերայ ջրոց Մակեդդովայ .
զագահութիւն արծաթոյ [14]ես ոչ առի՞ ։

[1] Յեբր. դադարէ [2] Եբր. զՅաբին արքայ Քանանացւոց [3] Եբր. Յառաջնորդել առաջնորդաց յԻսրայէլի, ի նուիրել ժողովրդեան զանձն [4] Եբր. Տեառն Աստուծոյ [5] Եբր. կաթեցուցին [6] Եբր. Տեառն, Սինա իսկ [7] Եբր. ճանապարհք [8] Եբր. որ գնային ընդ շաւիղս, գնային [9] Այլուր՝ ճոխք, կամ՝ աւանք [10] Եբր. ընտրեցին աստուածս նորս, յայնժամ պատերազմ ի դրունս. վահան միթէ երեւեցա՞ւ եւ գեղարդն ի մէջ քառասուն հազարաց [11] Եբր. իշխանացն Իսրայէլի. նահատակք, կամ՝ կամաւորք ի ժողովրդեան, [12] Եբր. Հեծեալք ի վերայ իշոց սպիտակաց, նստեալք յատեանս ատենակալաց, եւ որ շրջիք ի ճանապարհի, խօսեցարուք ։ (11) Ի ձայնէ բարբառոյ աղեղնաւորաց ի տեղիս ուր հանի ջուր . անդ տացեն զարդարութիւնս Տեառն, զարդարութիւնս ճոխութեան նորա

[13] Եբր. Յայնժամ էջ մնացորդն ընդդէմ զօրաւորաց ժողովրդեանն. էջ Տէր առ իս ընդդէմ հզօրաց։ (14) Որ ենն յարմատոյն Եփրեմայ՝ ընդդէմ Ամաղեկայ. յետ քո Բենիամին ի ժողովուրդս քո . ի Մաքիրայ իջին իշխանք , եւ ի Զաբուղոնէ որ ունին գաւազան դպրի ։ (15) Եւ զօրավարք Իսաքարու ընդ Դեբովրայ , եւ Իսաքար իբրեւ զԲարակ առաքեցաւ ի հովիտն զհետ նորա. ի բաժինս Ռուբենի մեծամեծ վարանք սրտի ։ (16) Ընդէ՞ր նստիցես ի մէջ երկուց գոմոց լսել զբառաչել հօտից. ի բաժինս Ռուբենի մեծամեծ հետազօտութիւնք սրտի ։ (17) Գաղաադ յայնկոյս Յորդանանու բնակեաց, եւ Դան ընդէ՞ր պանդխտեցի ի նաւս [14] Եբր. ոչ առին

20 Յերկնից ճակատեցան աստեղք յիւրա-
քանչիւր յօրինուածոց, ետուն պատե-
21 րազմ ընդ Սիսարայ։ Հեղեղատն Կիսո-
նի մերժեաց զնոսա, հեղեղատն [1]Կա-
դեսիմայ, հեղեղատն Կիսոնի. կոխեսցէ
[2]զնոսա անձն իմ, ուժ իմ զօրասցի՛՛
22 զօրութեամբ։ Յայնժամ կարթակոտորք
եղեն գարշապարք [3]երիվարաց Մագդա-
րովթայ, եւ հարթեցեն գարշապարք
իմ զհպարտութիւնս զարհուրանաց նո-
23 ցա՛՛։ Նզովեցէք զՄարովզ, ասէ հրեշ-
տակն Տեառն, անիծանելով անիծէք
զբնակիչս նորա, զի ոչ եկին յօգնականու-
թիւն Տեառն, [4]օգնական Տէր ի մէջ նա-
24 հատակաց հզօրն՛՛։ Օրհնեալ լիցի ի կա-
նայս Յայել կին Քաբերայ Կինեցւոյ,
օրհնեսցի ի կանայս ի խորանի [5]իւրում։
25 Ջուր խնդրեաց, եւ ետ կաթն, դաշ-
խուրանաւ զօրաւորաց մատոյց կոգի։
26 Ձեռն իւր [5]ձախ ձգեաց ի ցիցն, եւ զաջ
իւր [6]ի սպառսպուռ ջախջախանս անպի-
տանացուցանել՛՛, եւ վախճանեցոյց զՍի-
սարա. փարեաց ընդ ծամելիս նորա եւ
անցոյց ցից ընդ գլուխ [7]նորա եւ սա-
27 տակեաց։ Ի մէջ ոտից նորա անկաւ
ծանրացեալ, եւ նիրհեցոյց ի մէջ ծնգաց
իւրոց, յորում կորացաւ՝ մինչեւ զգետ-
28 նեցաւ, անդ անկաւ չուառականն։ Մայրն
Սիսարայ հայեցեալ դէտ ակն ունէր ի
վանդակապատ պատուհանէն, քանզի
տեսանէր զզարձեալսն ի Սիսարայ, վասն
զի՛՛ յետնեցան կառք նորա ի գալոյ։ Ըն-
29 դէ՞ր յամեցին հետք կառաց նորա։ Կա-
նայք իմաստունք [5]իշխանաց նորա ե-
տուն անդրէն պատասխանի նմա [5]եւ ա-
սեն՛՛. եւ ինքնին սնձամբ անձին առնէր
30 իւր պատասխանի. [8]Ոչ գտանիցեն զնա
աւարաբաշխք, առնել սէր բարեկամաց
ի գլուխ արանց։ Եւ եղեւ զաղխ նորա
կապուտ երանգոցն՝ Սիսարայ, կապուտ
երանգոցն գոյնագոյն նկարուց, նարօտ
պէսպէս նկարուց. այն էր պարանոցին
31 նորա կապուտ՛՛։ Այսպէս կորիցեն ամե-
նայն թշնամիք քո, Տէր, եւ որք սիրե-
ցենն զնա՝ իբրեւ զելս արեգական ի զօ-
րութեան նորա։
32 Եւ դադարեաց երկիրն ամս քառասուն։

ԳԼ. Զ

1 Եւ արարին որդիքն Իսրայէլի չար ա-
ռաջի Տեառն, եւ ետ զնոսա Տէր ի ձեռս
2 Մադիամու ամս եւթն։ Եւ զօրացաւ
ձեռն Մադիամու ի վերայ Իսրայէլի. եւ
արարին իւրեանց որդիքն Իսրայէլի յե-
րեսաց Մադիամու [9]զմս ի լերինս եւ
3 յայրս եւ յամուրս՛՛։ Եւ լինէր իբրեւ վա-
րէր այր Իսրայէլի, ելանէր Մադիամ եւ
Ամաղէկ եւ որդիքն արեւելեայց, հա-
4 սանէին ի վերայ նոցա. Եւ բանակէին
առ նոքօք, եւ ապականէին զբերս երկ-
րին մինչեւ ի մուտս Գազայ. եւ ոչ թո-
ղուին [10]դադար կենաց Իսրայէլի, ոչխար
5 եւ արջառ եւ էշ։ Զի ինքեանք եւ խա-
շինք իւրեանց ելանէին, եւ զվրանս իւ-
րեանց բերէին, եւ հասանէին իբրեւ զմա-
րախ բազմութեամբ. եւ ոչ գոյր թիւ
նոցա եւ ուղտուց իւրեանց. եւ հասա-
նէին յերկիրն Իսրայէլի ապականել զնա։
6 Եւ աղքատացաւ Իսրայէլ յոյժ յերեսաց
Մադիամու. եւ աղաղակեցին որդիքն
Իսրայէլի առ Տէր։
7 Եւ եղեւ իբրեւ աղաղակեցին որդիքն
Իսրայէլի առ Տէր վասն Մադիամու,
8 Եւ առաքեաց Տէր այր մարգարէ առ որ-
դիսն Իսրայէլի եւ ասէ ցնոսա, Այսպէս
ասէ Տէր Աստուած Իսրայէլի. Ես եմ
որ հանի զձեզ յերկրէն Եգիպտացւոց,
եւ կորզեցի զձեզ ի տանէ ծառայու-
9 թեան, Եւ փրկեցի զձեզ ի ձեռաց Ե-
գիպտացւոցն, եւ ի ձեռաց ամենայն նեղ-
չաց ձերոց. եւ մերժեցի զնոսա յերեսաց
10 ձերոց, եւ ետու ձեզ զերկիր նոցա. Եւ
ասացի զձեզ, Ես եմ Տէր Աստուած ձեր,
մի երկնչիք յաստուածոց Ամորհացւոցն,
յորոց միջի դուք բնակեալ էք յերկրի
նոցա. եւ ոչ լուարուք ձայնի իմում։
11 Եւ եկն հրեշտակ Տեառն, եւ նստաւ
ընդ կաղնեաւն որ էր յԵփրա Յովասու,
հօր Եսրեայ, եւ Գեդէոն որդի նորա ծե-

[1]Եբր. ի վաղուց [2]Եբր. անձն իմ [3]Եբր. երի-
վարաց. յարշաւանաց, յարշաւանաց զօրաւո-
րաց նորա [4]Եբր. յօգնականութիւն Տեառն
ընդդէմ հզօրաց [5]Եբր. պակաս [6]Եբր. յուռն
գործաւորաց [7]Եբր. նորա։ (27) Ի մէջ ոտից նորա
կորացաւ, անկաւ, զգետնեցաւ. ի մէջ ոտից
նորա կորացաւ անկաւ. ուր կորացաւն՝ անդ
անկաւ կործանեալ։ (28) Ընդ պատուհանն հայե-
ցաւ, եւ գոչեաց մայրն Սիսարայ ընդ վանդակա-
պատն, Զի՞ [8]Եբր. Ո՞չ ապաքէն գտանեն,
բաշխեն աւար, աղջիկ մի, նա՛ աղջկունս եր-
կուս առ այր. կապուտ երանգոց՝ վասն Սիսա-
րայ, կապուտ երանգոց նկարակերտ. երանգ
երկուստեք նկարէն՝ պարանոցի նորա կապուտ

[9]Եբր. սորս ի լերինս և այրս եւ ամուրս [10]Եբր.
պաշար

ծէր ցորեան ի [1]կալ, փախչել՝՝ յերեսաց
12 Մադիամու ։ Եւ երեւեցաւ նմա հրեշտակ
Տեառն եւ ասէ ցնա, Տէր ընդ քեզ,
13 հզօր զօրութեամբ ։ Եւ ասէ ցնա Գե-
դէոն, Ցիս, Տէր իմ. եթէ էր Տէր ընդ
մեզ, ընդէ՞ր գտին զմեզ ամենայն չա-
րիքս այսոքիկ. եւ ո՞ւր են ամենայն
սքանչելիքն նորա զոր պատմեցին մեզ
հարքն մեր եւ ասեն, Ո՞չ ապաքէն յԵ-
գիպտոսէ եհան զմեզ Տէր. եւ արդ ըն-
դէ՞ր մերժեաց զմեզ, եւ մատնեաց զմեզ
14 ի ձեռս Մադիամու ։ Եւ հայեցաւ ընդ
նա [2]հրեշտակն Տեառն՝՝, եւ ասէ ցնա,
Երթ զօրութեամբդ քով այդուիկ, եւ
փրկեսցես զԻսրայէլ ի ձեռաց Մադիա-
15 մու. ո՞չ ահաւասիկ ես առաքեցի զքեզ։ Եւ
ասէ ցնա Գեդէոն, Ցիս, Տէր, ի՞ւ փրկե-
ցից զԻսրայէլ. եւ ահա հազարաւորն իմ
խոնարհագոյն է ի մէջ Մանասէի, եւ
16 ես կրտսեր եմ ի տան հօր իմոյ ։ Եւ ա-
սէ [3]ցնա, Տէր՝՝ ընդ քեզ, եւ հարցես
17 զՄադիամ իբրեւ զայր մի ։ Եւ ասէ Գե-
դէոն, Եթէ գտի շնորհս առաջի աչաց
քոց, արասցես ինձ նշան եթէ [4]դու խօ-
18 սեցիր՝՝ ընդ իս ։ Մի՛ գնասցես աստի
մինչեւ եկից առ քեզ, եւ բերից զզոհ
իմ եւ եդից առաջի քո ։ Եւ ասէ, Ես
[5]եմ, եւ՝՝ նստայց աստ մինչեւ դարձցիս
19 առ իս ։ Եւ եմուտ Գեդէոն եւ հասոյց
ուլ մի յայծեաց, եւ արդու մի ալեւր
բաղարջ. եւ զմիսն եդ ի վերայ խանի,
եւ զարգանակն արկ ի պտոյտն, եւ եհան
առ նա ընդ կաղնեաւն եւ [6]երկիր ե-
20 պագ՝՝ ։ Եւ ասէ ցնա հրեշտակն [7]Տեառն,
Առ դու զմիսդ եւ զհացդ բաղարջ, եւ
դիր ի վերայ վիմին այնորիկ, եւ հեղ
21 զարգանակն. եւ արար այնպէս ։ Եւ
ձգեաց հրեշտակն Տեառն զծայր գաւա-
զանին որ ի ձեռին իւրում, եւ հասոյց
ի միսն եւ ի բաղարջսն. եւ բորբոքեցաւ
հուր ի վիմէ անտի, եւ եկեր զմիսն եւ
զբաղարջսն. եւ հրեշտակն Տեառն գնաց
22 յաչաց նորա ։ Եւ ետես Գեդէոն եթէ
հրեշտակ Տեառն է. եւ ասէ Գեդէոն,
Ա՛, ա՛, Տէր, Տէր. զի տեսի զհրեշտակն
23 Տեառն դէմ յանդիման ։ Եւ ասէ ցնա Տէր,
Խաղաղութիւն ընդ քեզ. մի՛ երկնչիր.
ոչ մեռանիցիս ։

24 Եւ շինեաց անդ Գեդէոն սեղան Տեառն,
եւ կոչեաց զնա Խաղաղութիւն Տեառն
մինչեւ ցայսօր. [8]եւ մինչդեռ ինքն ան-
դէն էր՝՝ յԵփրա հօր իւրոյ Եսրեայ ։
25 Եւ եղեւ ի գիշերին յայնմիկ եւ ասէ
ցնա Տէր, Առ դու քեզ զեզն պարարակ
հօր քո, եւ զեզն երկրորդ զեւթնեմեան.
եւ քակեսցես զսեղանն Բահաղու որ է
հօր քո, եւ կոտորեսցես [9]զանտառն որ
26 զնովաւ ։ Եւ շինեսցես սեղան Տեառն
Աստուծոյ քում, [10]որ երեւեցաւ քեզ ի
գլուխ լերինն Մանովզայ, ի տեղւոջ պա-
տերազմին՝՝. եւ առցես զեզն զերկրորդ,
եւ հանցես յողջակէզ փայտիւք [9]անտա-
27 ռին զոր կոտորեսցես ։ Եւ առ Գեդէոն
[11]երեքտասան այր ի ծառայից իւրոց, եւ
արար որպէս եւ խօսեցաւ ընդ նմա Տէր.
եւ եղեւ իբրեւ երկեաւ ի տանէ հօր
իւրոյ եւ յարանց քաղաքին առնել ի
տուէ, արար գիշերի ։
28 Եւ կանխեցին արք քաղաքին ընդ ա-
ռաւօտն, եւ ահա կործանեալ սեղանն
Բահաղու, եւ [9]անտառն որ զնովաւ՝ կո-
տորեալ, եւ եզն պարարակ հանեալ ող-
29 ջակէզ ի սեղանն շինեալ ։ Եւ ասեն այր
ցընկեր իւր, Ո՞ արար զիրս զայս. եւ
յուզէին եւ քննէին եւ ասէին թէ Գե-
դէոն որդի Յովասու արար զիրդ զայդ ։
30 Եւ ասեն արք քաղաքին ցՅովաս, Հան
արտաքս զորդին քո եւ մեռցի. զի կոր-
ծանեաց զսեղանն Բահաղու, եւ կոտո-
31 րեաց [9]զանտառն որ զնովաւ ։ Եւ ասէ
Յովաս ցարսն ցյարուցեալս ի վերայ նո-
րա, Դո՞ւք այժմ դատիցիք վասն Բա-
հաղու, եւ կամ դո՞ւք ապրեցուցանիցէք
զնա. որ [12]վրիժեաց նմա՝՝ մեռցի մին-
չեւ ցառաւօտ. եթէ աստուած իցէ, ինքն
խնդրեսցէ զվրէժ անձին իւրոյ, զի կոր-
32 ծանեցին զսեղան նորա ։ Եւ կոչեաց զնա
յաւուր յայնմիկ Յերոբաաղ, եւ ասէ,
Դատաստան Բահաղու. զի կործանեաց
զսեղան նորա ։
33 Եւ ամենայն Մադիամ եւ Ամաղէկ եւ
ամենայն որդիքն արեւելեայց ժողովե-
ցան ի միասին, եւ եկին բանակեցան ի
34 հովիտն Յեզրայելի ։ Եւ Հոգի Տեառն
[13]զօրացոյց զԳեդէոն՝՝, եւ եհար փող եղ-
ջերեաւն. եւ խրախոյս եբարձ Աբիեզեր

[1] Եբր. հնձանի փախուցանել, կամ, թաքուցանել [2] Եբր. Տէր [3] Եբր. ցնա Տէր, Զի ես եղէց [4] Եբր. դու ես որ խօսիս [5] Յեբր. պակաս [6] Եբր. մատոյց [7] Եբր. Աստուծոյ

[8] Եբր. եւ տակաւին անդ է [9] Եբր. աշերա, (տես Ելից ԼԴ. 13։) [10] Եբր. ի գլուխ ամրոյս այսորիկ ըստ կարգի [11] Եբր. տասն [12] Եբր. դատիցին վասն նորա՝ [13] Եբր. արկաւ զԳեդէոնիւ, այսինքն՝ պատեաց զնա իբրեւ հանդերձ

35 զկնի նորա։ Եւ արձակեաց հրեշտակս
ընդ ամենայն Մանասէ, եւ գոչեաց եւ
նա զկնի նորա. եւ արձակեաց հրեշտակս
յԱսեր եւ ի Զաբուղոն եւ ի Նեփթաղիմ,
եւ ելին ընդ առաջ նորա։
36 Եւ ասէ Գեդէոն ցԱստուած, Եթէ
փրկեսցես ձեռամբ իմով զԻսրայէլ որ-
37 պէս եւ խօսեցար, Ահա դնեմ զգզաթ մի
ասուի ի կալ. եթէ լինիցի [1]անձրեւ ի
վերայ գզաթուն միայն եւ ի վերայ ա-
մենայն երկրի ցամաքութիւն, գիտացից
եթէ փրկեսցես ձեռամբ իմով զԻսրա-
38 յէլ՝ որպէս եւ խօսեցար։ Եւ եղեւ այն-
պէս. եւ կանխեաց Գեդէոն ընդ առաւօտն
ի վաղիւ անդր, եւ քամեաց զգզաթն,
եւ էջ ցօղ ի գզաթէ անտի լի կոնքիւ
39 ջրոյ։ Եւ ասէ Գեդէոն ցԱստուած, Մի՛
բարկասցի ցասումն քո ինձ, եւ խօսե-
ցայց դարձեալ միւսանգամ, եւ փորձե-
ցից միւսանգամ զգզաթուն. եւ եղիցի
միւսանգամ ցամաքութիւն ի վերայ գզա-
թուն միայնոյ, եւ ի վերայ ամենայն երկրի
40 եղիցի [1]անձրեւ։ Եւ արար Աստուած այն-
պէս ի գիշերին յայնմիկ. եւ եղեւ ցա-
մաքութիւն ի վերայ գզաթուն միայնոյ,
եւ ի վերայ ամենայն երկրի եղեւ [1]անձրեւ։

## ԳԼ. Է

1 Եւ կանխեաց Յերոբաաղ, նա ինքն է
Գեդէոն, եւ ամենայն զօրն ընդ նմա,
եւ բանակեցան առ աղբերն Արեդայ. եւ
բանակն Մադիամու [2]եւ Ամաղեկայ" էր
նոցա ընդ հիւսիսոյ [3]ի Գաբաաթամ որ ի
2 հովտի անդ։ Եւ ասէ Տէր ցԳեդէոն, Բա-
զում է զօրդ որ ընդ քեզ է, առ ի չմատ-
նելոյ ինձ զՄադիամ ի ձեռս դոցա. գու-
ցէ պարծիցի ի վերայ իմ Իսրայէլ եւ ա-
3 սիցէ, Թէ Ձեռն իմ փրկեաց զիս։ Եւ
ասէ ցնա Տէր, Խօսեաց յականջս ժո-
ղովրդեանդ, եւ ասասցես, Ո՛ որ [4]վա-
տասիրտ իցէ՝ դարձցի. եւ դիմեցին" ի
լեռնէն Գաղաադու, եւ դարձան ի զօ-
րուէն քսան եւ երկու հազարք, եւ մնա-
4 ցին տասն հազար։ Եւ ասէ Տէր ցԳե-
դէոն, Տակաւին բազում է զօրդ. իջո
զդոսա ի ջուրն եւ փորձեցից քեզ զդո-
սա անդ. եւ եղիցի զորմէ ասացից ցքեզ
եթէ Դա երթիցէ ընդ քեզ, նա երթի-
ցէ ընդ քեզ. եւ զամենայն զորմէ ա-
սացից թէ Դա մի՛ երթիցէ ընդ քեզ, նա
5 մի՛ երթիցէ ընդ քեզ։ Եւ իջոյց զզօրն
ի ջուրն. եւ ասէ Տէր ցԳեդէոն, Ամե-
նայն որ լափիցէ լեզուաւ իւրով ի ջրոյ
անտի իբրեւ շուն, կացուսցես զնոսա
ուրոյն. եւ ամենայն որ անկցի ի վերայ
ծնկաց իւրոց ըմպել, կացուսցես զնոսա
6 առանձինն։ Եւ եղեւ թիւ ամենեցուն
որ լակեցին ձեռամբ եւ լեզուով իւր-
եանց, երեք հարիւր այր. եւ մնացորդք
ժողովրդեանն անկան ի վերայ ծնկաց
7 իւրեանց ըմպել ջուր։ Եւ ասէ Տէր ցԳե-
դէոն, Երեք հարիւր արամբքդ որ լա-
փեցին զջուր՝ փրկեցից զձեզ, եւ տաց
զՄադիամ ի ձեռս քո. եւ ամենայն ժո-
ղովուրդդ երթիցէ այր իւրաքանչիւր ի
8 տեղի իւր։ Եւ առին զպաշար ժողովր-
դեանն ի ձեռս իւրեանց, եւ զփողս նո-
ցա եղջերեայս։ Եւ զամենայն այր Իս-
րայելի արձակեաց զայր ի բնակութիւն
իւր, եւ զերեքհարիւր այրն եւեթ կա-
լաւ. եւ բանակն Մադիամու էին ի ներ-
քոյ նորա ի հովիտն։
9 Եւ եղեւ ի գիշերին յայնմիկ եւ ասէ
ցնա Տէր, Արի էջ աստի վաղվաղակի ի
բանակն, զի մատնեցի զնա ի ձեռս քո։
10 Ապա թէ երկնչիցիս դու իջանել, էջ նախ
դու եւ պատանեակդ քո Փարա ի բա-
11 նակն. Եւ լուիցես եթէ զինչ խօսիցին,
եւ ապա զօրասցին ձեռք քո, եւ իջցես
ի բանակն։ Եւ էջ ինքն եւ պատանեակն
իւր Փարա ընդ նմա ի մասն ինչ յիսնե-
12 րորդաց բանակին։ Եւ Մադիամ եւ Ա-
մաղէկ եւ ամենայն որդիքն արեւելեայց
բանակեալ էին ի ծործորան իբրեւ զմա-
րախ բազմութեամբ. եւ ուղտուց նոցա
ոչ գոյր թիւ, այլ էին իբրեւ զաւազ առ
13 եզերբ ծովու բազմութեամբ։ Եւ եմուտ
Գեդէոն, եւ ահա այր պատմէր ընկերի
իւրում երազ. Տեսի, ասէ, երազ, եւ ա-
հա նկանակ գարեղէն հոլովեալ ի բա-
նակս Մադիամու, եւ եկն մինչեւ ի խո-
րանն Մադիամու, եւ եհար զնա եւ կոր-
ծանեաց, եւ անկաւ խորանն վերուստ
14 ի վայր։ Պատասխանի ետ ընկերն նորա
եւ ասէ, Ոչ է այն՝ եթէ ոչ սուրն Գե-
դէոնի որդւոյ Յովասու առն Իսրայելաց-
ւոյ. մատնեաց Տէր ի ձեռս նորա զՄա-
դիամ եւ զամենայն բանակս։
15 Եւ եղեւ իբրեւ լուաւ Գեդէոն զպատ-
մութիւն երազոյն եւ զմեկնութիւն նո-
րա, երկիր եպագ Տեառն, եւ դարձաւ

[1] Եբր. ցօղ [2] Յեբր. պակասէ [3] Եբր. առ բլրովն Մորէի [4] Եբր. վատասիրտ եւ երկչոտ իցէ՝ դարձցի եւ մեկնեսցի

*անդրէն ի բանակն Իսրայելի, եւ ասէ,*
*Արիք, զի մատնեաց Տէր զբանակն Մա-*
16 *դիամու ի ձեռս* [1]*մեր։ Եւ բաժանեաց*
*զերեք հարեւր այրն յերիս առաջս. եւ*
*ետ զփողսն եղջերեայս*[2] *ի ձեռս ամենե-*
17 *ցունց, եւ ջահս ի մէջ սափորացն։ Եւ ա-*
*սէ ցնոսա, Ընդ իս հայեսջիք, եւ այն-*
*պէս արասջիք. ահա ես մտանեմ ի մէջ*
*բանակին, եւ եղիցի որպէս ես առնի-*
18 *ցեմ, նոյնպէս եւ դուք արասջիք։ Եւ*
*հարից ես զփողն եղջերեայ, եւ ամե-*
*նեքեան որ ընդ իս էք՝ հարջիք եւ դուք*
*զփողսն եղջերեայս, շուրջ զամենայն*
*բանակաւն, եւ ասասջիք, Սուր Տեառն*
*եւ Գեդէոնի։*
19 *Եւ եմուտ Գեդէոն եւ հարեւր այր ընդ*
*նմա ի կողմն բանակին, ի սկզբան միջ-*
*նոյ պահուն,* [3]*միայն զարթուցանելով*
*զարթուցին" զպահապանսն, եւ հարին*
*զփողսն եղջերեայս, եւ* [4]*թօթափեցին*
20 *զսափորսն որ ի ձեռս իւրեանց։ Եւ հարին*
*զփողսն եղջերեայս երեքին առաջքն, եւ*
*խորտակեցին զսափորսն, եւ առին ձա-*
*խու ձեռամբք իւրեանց զջահսն, եւ ա-*
*ջու ձեռօք իւրեանց զփողսն հարկանել,*
*եւ աղաղակեցին եւ ասեն, Սուր Տեառն*
21 *եւ Գեդէոնի։ Եւ կացին իւրաքանչիւր*
*առանձինն շուրջ զբանակաւն. եւ ըն-*
*թացաւ ամենայն բանակն,* [5]*փող հա-*
22 *րին" եւ փախեան։ Եւ գոչեցին երեք-*
*հարիւրեքին փողքն եղջերեայք. եւ եդ*
*Տէր զսուր առն յընկեր իւր եւ յամենայն*
*բանակն. եւ փախեաւ ամենայն բանակն*
*մինչեւ* [6]*ցԲեթսատտա, եւ մեւս դունդն*
*մինչեւ" ցդուռն Աբելմաուլայ եւ ցՏաբէթ։*
23 *Եւ գոչեաց այր Իսրայելացի ի Նեփ-*
*թաղիմայ եւ յԱսերայ եւ յամենայն Մա-*
24 *նասէէ, եւ զհետ մտին Մադիամու։ Եւ*
*հրեշտակս արձակեաց Գեդէոն յամենայն*
*սահմանս Եփրեմայ, եւ ասէ, Իջէք յա-*
*ռաջս Մադիամու, եւ կալարուք զկիրճս*
*ջրոյն մինչեւ ցԲեթփարա եւ ցՅորդա-*
*նան։ Եւ գոչեաց ամենայն այր Եփրե-*
*մի, եւ կալան իւրեանց զանցս ջրոյն*
25 *մինչեւ ցԲեթփարա եւ ցՅորդանան։ Եւ*
*կալան զերկու իշխանսն Մադիամու զՈվ-*
*րեբ եւ զԶեբ. եւ սպանին զՈվրեբ* [7]*ի*
*Սովրորեբա, եւ զԶեբ սպանին* [8]*յԱկեբ-*
*զեբա, եւ հալածեցին զՄադիամ. եւ*
*զգլուխն Ովրեբայ եւ Զեբայ բերին առ*
*Գեդէոն յայնմ կողմանէ Յորդանանու։*

## ԳԼ. Ը

1 **Ե**ւ *ասեն ցԳեդէոն այր Եփրեմի, Զի՞նչ*
*է բանդ այդ զոր արարեր ընդ մեզ, զի*
*ոչ կոչեցեր զմեզ յորժամ երթայիր պա-*
*տերազմել ընդ Մադիամու. եւ վիճէին*
2 *ընդ նմա սաստկագոյնս։ Եւ ասէ ցնո-*
*սա, Արդ զի՞նչ ինչ արարի իբրեւ զձեզ.*
*ո՞չ ապաքէն լաւագոյն է ճռաքաղու-*
*թիւնդ Եփրեմի քան զկութան Աբիեզե-*
3 *րայ։ Ի ձեռս ձեր մատնեաց* [9]*Տէր զիշ-*
*խանսն Մադիամու զՈվրեբ եւ զԶեբ. եւ*
*զի՞նչ կարացի առնել իբրեւ զձեզ։ Եւ*
*ապա դադարեաց ոգի նոցա ի նմանէ ի*
*խօսել նորա զբանս զայս։*
4 *Եւ եկն Գեդէոն ի Յորդանան, եւ անց*
*ինքն եւ երեք հարեւր արքն որ ընդ նմա*
5 *պարտասեալք* [10]*եւ քաղցեալք"։ Եւ ասէ*
*ցարսն Սոկքովթայ, Տուք աւադիկ հաց*
*ի կերակուր զօրուս այսմիկ որ ընդ իս,*
*զի քաղցեալ են. եւ ես պնդեցայց զհետ*
*Զեբէի եւ Սաղմանայ թագաւորացն Մա-*
6 *դիամու։ Եւ ասեն իշխանքն Սոկքով-*
*թայ, Միթէ ձեռն Զեբէի եւ Սաղմա-*
*նայ իցէ՞ ի ձեռին քում, զի տացուք հաց*
7 *զօրականիդ քում։ Եւ ասէ Գեդէոն, Ոչ*
*այդպէս, այլ ի տալ Տեառն զԶեբէի եւ*
*զՍաղմանա ի ձեռս իմ, եւ ես* [11]*քարշե-*
*ցից զմարմինս ձեր փշովք անապատի եւ*
8 *բորկոնիմաւ։ Եւ ել անտի ի Փանուէլ,*
*եւ խօսեցաւ ընդ նոսա նոյնպէս. եւ պա-*
*տասխանի արարին նմա արք Փանուէ-*
*լայ՝ զոր օրինակ արարին նմա պատաս-*
9 *խանի արք Սոկքովթայ։ Եւ խօսեցաւ*
*Գեդէոն ընդ արս Փանուէլի եւ ասէ, Ի*
*դառնալ իմում այսրէն խաղաղութեամբ՝*
*կործանեցից զաշտարակդ զայդ։*
10 *Եւ Զեբէի եւ Սաղմանա էին ի Կար-*
*կար, եւ բանակ նոցա ընդ նոսա, իբ-*
*րեւ հնգետասան հազար այր ընդ ամե-*
*նայն՝ որ մնացեալ էին յամենայն բանա-*
*կէ որդւոյն արեւելից. եւ անկեալք էին*
*հարեւր եւ քսան հազար արանց սուսե-*
11 *րամերկաց։ Եւ ել Գեդէոն ընդ ճանա-*
*պարհս վրանաբնակչացն յարեւելից Նա-*
*բաէի եւ հանդէպ Նաբեայ, եւ եհար զբա-*

---

[1] Եբր. ձեր  [2] Եբրայեցին յուղէրս, եւ սափորս թափուրս  [3] Եբր. այն ինչ կացուցեալ էր նոցա  [4] Եբր. խորտակեցին  [5] Եբր. և աղաղակեցին  [6] Եբր. ցԲեթսատտա ի կողմն Սարերայ, մինչեւ  [7] Այլք՝ առ վիմին Որեբայ

[8] Այլք՝ առ հնձանին Զեբայ  [9] Եբր. Աստուած  [10] Եբր. առկայն և հալածէին  [11] Եբր. ծեծեցից

12 նակն . զի ահա էր բանակն յանհոգս ։ Եւ
փախեան Զեբէէ եւ Սաղմանա , եւ պնդե-
ցաւ զհետ նոցա . եւ ձերբակալ արար
զերկոսեան թագաւորսն Մադիամու զԶե-
բէէ եւ զՍաղմանա , եւ զամենայն բա-
նակ նոցա զգրգեցայց ։
13 Եւ դարձաւ Գեդէոն որդի Յովասու ի
պատերազմէն [1]ի զառիվայրէ անտի Արե-
14 սայ" ։ Եւ կալաւ պատանեակ մի յարանց
Սոկքովթայ , եւ եհարց զնա . եւ գրեաց
առ ինքն զիշխանսն Սոկքովթայ եւ զծերս
15 նորա եւթանասուն եւ եւթն այր ։ Եւ
եկն [2]Գեդէոն առ իշխանսն" Սոկքով-
թայ , եւ ասէ ցնոսա , Ահաւասիկ Զեբէէ
եւ Սաղմանա , վասն որոց նախատեցէք
զիս եւ ասացէք , Միթէ ձեռն Զեբէի
եւ Սաղմանայ այժմ ի ձեռի՞ն քում իցէ ,
զի տացուք հաց արանց քոց նքթելոց ։
16 Եւ առ [3]զիշխանսն եւ" զծերս քաղաքին
եւ փուշս յանապատէ եւ զբորկանիմն ,
եւ [4]քարշեաց նոքօք զարսն Սոկքովթայ ։
17 Եւ զաշտարակն Փանուելի կործանեաց ,
եւ կոտորեաց զարս քաղաքին ։
18 Եւ ասէ ցԶեբէէ եւ ցՍաղմանա , [5]Ո՞ւր
են" արքն զորս կոտորեցէք ի Թաբովր ։
Եւ ասեն , Որպէս դու , նոյնպէս եւ
[6]նոքա նման քեզ , եւ դու նման նոցա,"
19 իբրեւ զտեսիլ որդւոց թագաւորի ։ Եւ
ասէ Գեդէոն , Եղբարք իմ եւ որդիք մօր
իմոյ էին . [3]եւ երդուաւ նոցա եւ ասէ,"
Կենդանի է Տէր , եթէ կենդանի պահեալ
20 էր ձեր զնոսա , ոչ սպանանէի զձեզ ։ Եւ
ասէ ցՅեթեր յանդրանիկ իւր , Արի սպան
զդոսա . եւ ոչ եհան պատանեակն զսուր
21 իւր զի երկեաւ , քանզի մանուկ էր ։ Եւ
ասեն Զեբէէ եւ Սաղմանա , Արի եւ դու
քեզէն պատահեա մեզ , զի ըստ առն եւ
զօրութիւն իւր . եւ յարեաւ Գեդէոն եւ
սպան զԶեբէէ եւ զՍաղմանա , եւ առ զմա-
նեակսն ի պարանոցաց ուղտուց նոցա ։
22 Եւ ասեն այր Իսրայէլի ցԳեդէոն , Իշ-
խեա մեզ դու եւ որդի քո , եւ որդի որդ-
ւոյ քո , զի փրկեցեր զմեզ ի ձեռաց
23 Մադիամու ։ Եւ ասէ ցնոսա Գեդէոն ,
Ոչ իշխեցից ես ձեզ , եւ ոչ իշխեսցէ ձեզ
որդի իմ . այլ Տէր իշխեսցէ ձեզ ։
24 Եւ ասէ ցնոսա Գեդէոն , Խնդրեցից
ի ձէնջ հայցուածս ինչ , եւ տուք ինձ առ
այր զինդ մի յաւարէ անտի . զի զինդք

[1] Կամ, յառաջ քան զելս արեւու [2] Եբր. առ արսն [3] Յեբր. դոյնուն [4] Եբր. խրատեաց [5] Եբր. Որ. պիսի՞ ոք էին [6] Եբր. նոքա . իւրաքանչիւր

ոսկիք էին նոցա , քանզի Իսմայելացիք
25 էին ։ Եւ ասեն , Տալով տացուք . եւ տա-
րածեցին [7]զհանդերձս նորա", եւ ընկե-
ցին անդր այր իւրաքանչիւր զգինդս
26 [3]ոսկիս զաւարի իւրոյ ։ Եւ եղեւ կշիռ
գնդացն ոսկեաց զոր խնդրեաց՝ հազար
եւ եւթն հարեւր սիկղ ոսկւոյ , թող
զշնչանոնսն եւ զմեհեանսն եւ [8]զպսա-
կակալս եւ զծիրանիս , եւ որ ինչ ի թա-
գաւորսն" Մադիամու . եւ թող զմա-
նեակս ոսկիս պարանոցաց ուղտուց նո-
27 ցա ։ Եւ արար զայն Գեդէոն յեփուդ , եւ
հաստատեաց զայն ի քաղաքի իւրում
յԵփրա . եւ պոռնկեցաւ ամենայն Իսրա-
յէլ զկնի նորա անդր , եւ եղեւ Գեդէո-
նի եւ տան նորա ի գայթակղութիւն ։
28 Եւ վանեցաւ Մադիամ առաջի որդւոցն
Իսրայելի եւ ոչ եւս յաւելին ամբառնալ
զգլուխս իւրեանց . եւ դադարեաց երկիրն
ամս քառասուն յաւուրս Գեդէոնի ։
29 Եւ գնաց Յերոբաաղ որդի Յովասու ,
30 եւ բնակեաց ի տան իւրում ։ Եւ Գեդէո-
նի էին եւթանասուն որդիք ելեալք յե-
րանաց նորա . զի կանայք բազումք էին
31 նորա . Եւ հարճ նորա որ ի Սիկիմայ՝
ծնաւ նմա եւ նա որդի , եւ եդ անուն նմա
32 Աբիմելէք ։ Եւ մեռաւ Գեդէոն որդի Յո-
վասու ի բարւոք ծերութեան , եւ թա-
ղեցաւ ի գերեզմանի Յովասու հօր իւ-
րոյ յԵփրա հօրն Եզրեայ ։
33 Եւ եղեւ իբրեւ մեռաւ Գեդէոն , դար-
ձան որդիքն Իսրայելի եւ պոռնկեցան
զհետ Բահաղիմայցն . եւ եդին զուխտ
իւրեանց ընդ Բահաղուն Բերիթայ , լի-
34 նել նոցա յաստուած ։ Եւ ոչ յիշե-
ցին որդիքն Իսրայելի զՏէր Աստուած
իւրեանց որ փրկեաց զնոսա յամենայն
35 թշնամեաց իւրեանց շուրջանակի ։ Եւ ոչ
արարին ողորմութիւն ընդ տանն Յերո-
բաաղայ , որ նա ինքն է Գեդէոն , ըստ
ամենայն բարութեանն զոր արար ընդ
Իսրայելի ։

ԳԼ . Թ

1 Եւ գնաց Աբիմելէք որդի Յերոբաաղայ
ի Սիկիմ առ եղբարս մօր իւրոյ , եւ խօ-
սեցաւ ընդ նոսա եւ ընդ ամենայն ազ-
գատոհմի տան հօր մօր իւրոյ եւ ասէ ,
2 Խօսեցարուք յականջս ամենայն արանց
Սիկիմացւոց . Ո՞ր լաւ իցէ ձեզ , իշխել
ձեզ եւթանասնի՞ն արանց ամենայն որդ-

[7] Եբր. հանդերձ [8] Եբր. զծիրանիս որ ի վերայ թագաւորացն

ւոցն Յերոբաաղայ, եթէ տիրել ձեզ առն
միոջ. եւ յիշեցէք զի ոսկր ձեր եւ մար-
3 մին ձեր եմ ես։ Եւ խօսեցան զնմանէ
եղբարք մօր նորա յականջս ամենայն ա-
րանց Սիկիմացւոց զամենայն բանս զայ-
սոսիկ. եւ միտեցաւ սիրտ նոցա զկնի
Աբիմելեքայ, զի ասացին թէ Եղբայր
4 մեր է։ Եւ ետուն նմա եւթանասուն ար-
ծաթոյ ի տանէ Բահաղու Բերիթայ [1]ուխ-
տին, եւ վարձեաց նոքօք Աբիմելէք
արս ունայնս եւ զարհուրեցուցիչս, եւ
5 գնացին զհետ նորա։ Եւ եմուտ ի տուն հօր
իւրոյ յԵփրա, եւ կոտորեաց զեղբարս իւր
զորդիսն Յերոբաաղայ արս եւթանասուն,
ի վերայ վիմի միոյ. եւ մնաց Յովաթամ որդի
Յերոբաաղայ կրտսեր, քանզի թաքեաւ։
6 Եւ ժողովեցան ամենայն արք Սիկիմացւոց
եւ ամենայն տունն Մաաղոնայ, եւ չոգան
թագաւորեցուցին զԱբիմելէք ի թագա-
ւոր՝ առ կաղնեաւ [2]կոտւոյն որ ի Սիկիմա։
7 Եւ ազդ եղեւ Յովաթամայ, եւ գնաց
եւ եկաց ի վերայ գլխոյ լերինն ի Գա-
րիզին. ամբարձ զձայն իւր եւ [3]ելաց,
եւ ասէ ցնոսա, Լուարո՛ւք ինձ, արք
Սիկիմացւոց, եւ լուիցէ ձեզ Աստուած։
8 Գնալով գնացին ծառք օծանել իւրեանց
թագաւոր, եւ ասեն ցձիթենին, Թա-
9 գաւորեա ի վերայ մեր։ Եւ ասէ ցնոսա
ձիթենին, Թողից զպարարտութիւն իմ
[4]յորոյ փառաւորեաց զիս Աստուած եւ
10 մարդիկ՝՝, եւ երթայցեմ իշխե՞լ ծառոց։ Եւ
ասեն ծառքն ցթզենին, Եկ թագաւորեա
11 ի վերայ մեր։ Եւ ասէ ցնոսա թզենին,
Թողեալ զքաղցրութիւն իմ եւ զբերս
բարութեան իմոյ, եւ երթայցեմ իշխա՞ն
12 լինել փայտից։ Եւ ասեն ծառքն ցորթ,
13 Եկ թագաւորեա ի վերայ մեր։ Եւ ասէ
ցնոսա որթ, Թողեալ զգինի իմ [1]եւ զու-
րախութիւն Աստուծոյ եւ մարդկան, եւ
14 երթայցեմ իշխա՞ն լինել փայտից։ Եւ ա-
սեն ծառքն ցդժնիկ, Եկ թագաւորեա ի
15 վերայ մեր։ Եւ ասէ դժնիկ ցծառս, Թէ
արդարեւ օծանիցէք զիս թագաւորել ի
վերայ ձեր, եկայք ծածկեցարուք ընդ
հովանեաւ իմով, եթէ ոչ, ելանիցէ հուր
ի դժնկէ աստի, եւ կերիցէ զեղեւնա-
16 փայտս Լիբանանու։ Եւ արդ եթէ ճշմար-
տութեամբ եւ բոլանդակութեամբ ա-
րարէք եւ թագաւորեցուցէք զԱբիմե-
լէք, եւ [5]թէ որպէս՝՝ արարէք ընդ Յե-
րոբաաղ եւ ընդ տուն նորա, եւ եթէ
ըստ հատուցման ձեռին նորա արարէք
17 նմա, Որպէս ետ պատերազմ հայր իմ
փոխանակ ձեր, եւ ընկէց զանձն իւր
յառաջ, եւ ապրեցոյց զձեզ ի ձեռաց
18 Մադիամու, Եւ դուք յարեայք ի վերայ
տան հօր իմոյ այսօր, եւ կոտորեցէք
զորդիս նորա, արս եւթանասուն ի վե-
րայ վիմի միոյ, եւ թագաւորեցուցէք
զԱբիմելէք զորդի աղախնոյ նորա ի վե-
րայ արանց Սիկիմացւոց, զի եղբայր ձեր
19 է. Եթէ ճշմարտութեամբ եւ բոլանդա-
կութեամբ արարէք ընդ Յերոբաաղայ եւ
ընդ տան նորա յաւուրս յայսմիկ, [1]օրհ-
նեսջիք դուք եւ՝՝ ուրախ լիջիք յԱբիմե-
20 լէք, եւ ուրախ լիցի եւ նա ի ձեզ. Ա-
պա թէ ոչ, ելցէ հուր յԱբիմելեքայ եւ
կերիցէ զարս Սիկիմացւոց, եւ զտունն
Մաաղոնայ. [6]ապա թէ ոչ,՝՝ ելցէ հուր
յարանց Սիկիմացւոց եւ ի տանէն Մաաղո-
21 նայ եւ կերիցէ զԱբիմելէք։ Եւ փախ-
եաւ Յովաթամ եւ զերծաւ, եւ գնաց ընդ
ճանապարհն ի Բերա, եւ բնակեաց անդ
յերեսաց Աբիմելեքայ եղբօր իւրոյ։
22 Եւ իշխեաց Աբիմելէք ի վերայ Իսրա-
23 յելի ամս երիս։ Եւ առաքեաց Աստուած
ոգի չար ի մէջ Աբիմելեքայ եւ ի մէջ ա-
րանց Սիկիմացւոց, եւ [7]արհամարհեցին
արք Սիկիմացւոց զտունն Աբիմելեքայ՝՝
24 Ածել ի վերայ նորա զանիրաւութիւն
եւթանասնից որդւոցն Յերոբաաղայ, եւ
հատուցանել զարիւն նոցա ի վերայ Ա-
բիմելեքայ եղբօրն իւրեանց որ կոտո-
րեաց զնոսա, եւ ի վերայ արանց Սիկիմաց-
ւոց՝ զի զօրացուցին զձեռս նորա կոտորել
25 զեղբարս իւր։ Եւ դարձուցին նմա դա-
րան արք Սիկիմացւոց ի վերայ գլխոց
լերանց, եւ յափշտակէին զամենայն որ
անցանէին առ նոքօք ընդ ճանապարհն.
26 եւ ազդ եղեւ Աբիմելեքայ։ Եւ եկն Գաաղ
որդի Աբեդդայ եւ եղբարք նորա. եւ
անցին ի Սիկիմ, եւ վստահ եղեն ի նա
27 արք Սիկիմացւոց. Եւ ելին յանդաս-
տանսն եւ կթեցին զայգիս իւրեանց, եւ
հարին հնձանս, եւ արարին պարանցիկս,
եւ մտին ի տուն աստուածոյն իւրեանց.
եւ կերան եւ արբին եւ անիծին զԱբի-
28 մելէք։ Եւ ասէ Գաաղ որդի Աբեդդայ,
Ո՞ է Աբիմելէք, եւ ո՞ է [8]որդին Սիքե-

[1] Եբր· դովուե [2] Եբր· կոթողին. Յոմ. պաշտակին
[3] Եբր· աղաղակեաց [4] Եբր· որով պատուեն յիս
զԱստուած եւ զմարդիկ

[5] Եբր· եթէ բարիս [6] Եբր· եւ [7] Եբր· գործեցին
դաւ արք Սիկիմացւոց Աբիմելեքայ [8] Եբր· Սիւքեմ

մայ՝՝ զի ծառայեսցուք նմա. ո՞չ նա է որ-
դի Յերոբաաղայ, եւ Զեբուղ [1]ծառայ իւր՝՝
սպասաւորն նորա, [2]հանդերձ արամբք՝՝ Ե-
մովրայ հօր Սիքեմայ, եւ զի՞ է զի ծա-
29 ռայեսցուք նմա։ Եւ ո՞ տայր զժողովուրդս
զայս ի ձեռս իմ, եւ փոխէի զԱբիմե-
լէք. եւ ասէի ցԱբիմելէք, Բազմացո
զզօրս քո եւ ել ինձ։
30 Եւ լուաւ Զեբուղ իշխան քաղաքին
զբանս Գաաղայ որդւոյ Աբեդդայ, եւ
31 սրտմտեցաւ բարկութեամբ. Եւ առա-
քեաց առ Աբիմելէք հրեշտակս [3]պատա-
րագօք եւ ասէ, Ահաւասիկ Գաաղ որ-
դի Աբեդդայ եւ եղբարք նորա եկին ի
Սիկիմ, եւ պաշարեն զքաղաքս ի վերայ
32 քո։ Արդ արի գիշեր դու եւ զօրդ քո
որ ընդ քեզ է, եւ դարանամուտ լեր
33 յանդաստանին. Եւ եղիցի ընդ առաւօտն
ի ծագել արեգականն՝ կանխեսցես եւ
հասցես զքաղաքաւս. եւ ահա նա եւ զօրս
որ ընդ նմա է ելանէ առ քեզ. եւ արաս-
ցես ընդ նա որպէս ինչ գտցէ ձեռն քո։
34 Եւ յարեաւ Աբիմելէք եւ ամենայն զօրն
որ ընդ նմա գիշեր, եւ մտին ի դարանս
35 զՍիկիմաւ չորք առաջք։ Եւ եղեւ [1]ընդ
առաւօտն՝՝ ել Գաաղ որդի Աբեդդայ եւ
եկաց ի մուտս դրան քաղաքին. եւ յա-
րեաւ Աբիմելէք եւ ամենայն զօրն որ
36 ընդ նմա ի դարանացն։ Եւ ետես Գաաղ
որդի Աբեդդայ զզօրն, եւ ասէ ցԶեբուղ,
Ահաւասիկ զօր իջանէ ի գլխոյ լերանցն.
եւ ասէ ցնա Զեբուղ, Զստուեր լերանցն
37 տեսանես դու իբրեւ զմարդիկ։ Եւ յա-
ւել եւս խօսել Գաաղ եւ ասէ, Ահաւա-
սիկ զօր իջանէ [1]ընդ ծովակողմն՝՝ առ
պորտով երկրին, եւ առաջ մի եկ ընդ
38 ճանապարհ կաղնւոյն [4]զխանանեայց։ Եւ
ասէ ցնա Զեբուղ, Արդ ո՞ւր է բերան
քո որ ասէիր, թէ Ո՞վ է Աբիմելէք, զի
ծառայեսցուք նմա. ո՞չ աւասիկ այն զօր
է զոր դուն անարգէիր. արդ ել եւ տուր
39 ընդ նմա պատերազմ։ Եւ ել Գաաղ ա-
ռաջի արանցն Սիկիմացւոց, եւ մար-
40 տեաւ ընդ Աբիմելեքայ։ Եւ հալածեաց
զնա Աբիմելէք. եւ փախեաւ յերեսաց
նորա, եւ անկան վիրաւորք բազումք
41 մինչեւ ցդրունս քաղաքին։ Եւ նստաւ Ա-
բիմելէք յԱրիմ, եւ եհան Զեբուղ զԳաաղ
եւ զեղբարս նորա զի մի՛ բնակեսցեն ի
42 Սիկիմ։ Եւ եղեւ ի վաղիւ անդր եւ ել

[1] Եբր. դուլոս [2] Եբր. ծառայեցէք արանց [3] Եբր. ի ծածուկ [4] Եբր. Մէոնենիմայ

ժողովուրդն ի դաշտն, եւ ազդ եղեւ Ա-
43 բիմելեքայ. Եւ առ զզօրն եւ բաժանեաց
յերիս առաջս, եւ եմուտ նստաւ ի դա-
րան. եւ ետես, եւ ահա զօր ելանէր ի
քաղաքէ անտի. եւ յարեաւ ի վերայ
44 նոցա եւ եհար զնոսա։ Եւ Աբիմելէք եւ
գունդքն որ ընդ նմա՝ ճակատեցան եւ
կացին առ դրան քաղաքին. եւ երկու
գունդքն սփռեցան ի վերայ ամենեցուն
որ յանդաստանին էին, եւ հարին զնո-
45 սա։ Եւ Աբիմելէք պատերազմէր ընդ
քաղաքին զօրն զայն ողջոյն, եւ առին
զքաղաքն, եւ զժողովուրդն որ ի նմա
կոտորեցին, եւ զքաղաքն կործանեցին
եւ աղաւ վարեցին։
46 Եւ լուան ամենայն արք աշտարակին
Սիկիմացւոց, եւ եկին յամրոց տանն
47 Բեթէլ Բերիթայ։ Եւ ազդ եղեւ Աբի-
մելեքայ եթէ ժողովեցան ամենայն արք
48 աշտարակին Սիկիմացւոց։ Եւ ել Աբի-
մելէք ի լեառնն Սեղմոն, ինքն եւ ամե-
նայն զօրն որ ընդ նմա, եւ առ Աբիմե-
լէք տապար ի ձեռն իւր եւ կոտորեաց
[5]բեռն մի փայտի, եւ առ զայն եւ եդ
զայն ի վերայ ուսոց իւրոց, եւ ասէ ցզօրն
իւր, Զինչ տեսանիցէք զիս զոր առնի-
ցեմ, արասջիք եւ դուք վաղվաղակի
49 իբրեւ զիս։ Կոտորեցին եւ նոքա իւրա-
քանչիւր որ ամենեքին [5]բեռն մի փայտ,
եւ բարձին եւ գնացին զհետ Աբիմելե-
քայ. եւ եդին [6]ի վերայ ամրոցին՝՝, եւ
այրեցին ի վերայ նոցա զամրոցն հրով.
եւ մեռան ամենայն արք աշտարակին
Սիկիմացւոց իբրեւ հազար մի՛ ընդ այր
եւ ընդ կին։
50 Եւ չոգաւ Աբիմելէք ի Թեբէս, եւ
51 նստաւ շուրջ զնովաւ, եւ առ զնա։ Եւ
աշտարակ մի էր հզօր ի մէջ քաղաքին,
եւ փախեան անդր ամենայն արք եւ կա-
նայք եւ ամենայն գլխաւորք քաղաքին,
եւ փակեցին ընդդէմ իւրեանց, եւ ելին
52 ի տանիս աշտարակին։ Եւ եկն Աբիմե-
լէք մինչեւ ցաշտարակն, եւ մարտեաւ
ընդ նմա, եւ մերձեցաւ Աբիմելէք ի
53 դուռն աշտարակին[7]. Եւ ընկէց կին մի
բեկոր երկանի ի վերայ գլխոյ նորա, եւ
54 մանրեաց զգագաթն Աբիմելեքայ։ Եւ
աղաղակեաց վաղվաղակի առ պատա-
նեակն կապարճակիր իւր եւ ասէ ցնա,
Մերկեա զսուր քո եւ սպան զիս. զու-

[5] Եբր. ատ [6] Եբր. զամրոցաւն [7] Եբր. աշտարակին, այրել զնա հրով

ցէ ասիցեն թէ կին սպան զնա ։ Եւ խո-
ցեաց զնա պատանին իւր , եւ մեռաւ
55 Աբիմելէք ։ Եւ ետես այր Իսրայէլացի
թէ մեռաւ Աբիմելէք , գնացին այր իւ-
րաքանչիւր ի տեղի իւր ։
56 Եւ դարձոյց Աստուած զչարիսն Աբի-
մելեքայ ի գլուխ իւր զոր արար հօր իւ-
րում կոտորելով զեւթանասուն եղբարսն
57 իւր ։ Եւ զամենայն չարիսն արանց Սի-
կիմացւոց դարձոյց Աստուած ի գլուխս
նոցա , եւ եկին ի վերայ նոցա անէծքն
Յովաթամայ որդւոյ Յերոբաաղայ ։

## ԳԼ. Ժ

1 Եւ յարեաւ յետ Աբիմելեքայ փրկել զԻս-
րայէլ Թովղա որդի Փուայ , [1]որդի հօրեղ-
բօր նորա", այր յԻսաքարայ . եւ նա բնա-
2 կէր [2]ի Սամարիա , ի լերինն Եփրեմայ ։ Եւ
դատեաց զԻսրայէլ ամս քսան եւ երիս ,
եւ մեռաւ եւ թաղեցաւ [2]ի Սամարիա ։
3 Եւ յարեաւ յետ նորա Յայիր Գաղաա-
դացի , եւ դատեաց զԻսրայէլ ամս քսան
4 եւ երկուս ։ Եւ եղեն նորա որդիք երե-
սուն [3]եւ երկու", որ հեծանէին յերեսուն
[3]եւ երկու" յովանակս . եւ երեսուն [3]եւ
երկու" քաղաքք նոցա. եւ [4]կոչեաց զնո-
սա աւանս Յայիրայ մինչեւ ցայսօր , որ
5 են ի Գաղաադ ։ Եւ մեռաւ Յայիր եւ
թաղեցաւ ի Կամոն ։
6 Եւ յաւելին որդիքն Իսրայէլի առնել
չար առաջի Տեառն , եւ պաշտեցին զԲա-
հաղիմսն եւ զԱստարովթն , եւ զաս-
տուածս Ասորւոց եւ զաստուածս Սիդո-
նայ եւ զաստուածս Մովաբայ եւ զաս-
տուածս որդւոցն Ամոնայ եւ զաստուածս
այլազգեացն . եւ թողին զՏէր եւ ոչ ծա-
7 ռայեցին նմա ։ Եւ սրտմտեցաւ բարկու-
թեամբ Տէր Իսրայէլի , եւ մատնեաց
զնոսա ի ձեռս այլազգեացն , եւ ի ձեռս
8 որդւոցն Ամոնայ ։ Եւ խախտեցին եւ
խորտակեցին զորդիսն Իսրայէլի ի ժա-
մանակին յայնմիկ ամս ութուտասն , զա-
մենայն Իսրայէլացիս յայնկոյս Յորդա-
նանու , յերկրի Ամորհացւոցն ի Գա-
9 ղաադ ։ Եւ անցին որդիքն Ամոնայ ընդ
Յորդանան տալ պատերազմ ընդ Յուդայ
եւ ընդ Բենիամինի , եւ ընդ տանն Եփրե-
մայ . եւ նեղեցան որդիքն Իսրայէլի յոյժ ։
10 Եւ աղաղակեցին որդիքն Իսրայէլի առ
Տէր եւ ասեն , Մեղաք քեզ , զի թողաք

[1]Եբր. որդւոյ Դովդայ [2]Եբր. ի Սամիր [3]Եբր. պակասի [4]Եբր. կոչեցին

զԱստուածդ մեր եւ պաշտեցաք զԲա-
11 հաղիմսն ։ Եւ ասէ Տէր ցորդիսն Իսրա-
յէլի , Ո՞չ ապաքէն Եգիպտացիք եւ Ա-
մովրհացիք եւ որդիք Ամոնայ [3]եւ Մո-
12 վաբ" եւ այլազգիք Եւ Սիդոնացիք եւ
Ամաղէկ եւ [5]Քանան նեղեցին զձեզ ,
եւ աղաղակեցէք առ իս եւ փրկեցի զձեզ
13 ի ձեռաց նոցա ։ Եւ դուք թողէք զիս եւ
ծառայեցէք աստուածոց օտարաց . վասն
14 այնորիկ ոչ յաւելից փրկել զձեզ ։ Եր-
թայք աղաղակեցէք առ աստուածսն զոր
ընտրեցէք ձեզ , եւ նոքա փրկեսցեն
զձեզ ի ժամանակի նեղութեանց ձերոց ։
15 Եւ ասեն որդիքն Իսրայէլի ցՏէր , Մե-
ղաք , արա դու ընդ մեզ զամենայն որ
ինչ հաճոյ թուի առաջի քո . բայց , Տէր ,
միայն ապրեցո զմեզ յաւուր յայսմիկ ։
16 Եւ մերժեցին զաստուածսն օտարոտիս
ի միջոյ իւրեանց , եւ պաշտեցին [6]զՏէր
միայն . եւ ոչ հաճեցաւ ընդ ժողո-
վրդեանն . եւ յոգիս ապաստան եղեւ
յաշխատութենէ" Իսրայէլի ։
17 Եւ ելին որդիքն Ամոնայ եւ բանա-
կեցան ի Գաղաադ . եւ ելին որդիքն
Իսրայէլի եւ բանակեցան [7]ի դիտանո-
18 ցին ։ Եւ ասեն իշխանք ժողովրդեանն
Գաղաադու այր ցընկեր իւր , Այր որ
սկիզբն առնիցէ պատերազմել ընդ որ-
դիսն Ամոնայ , եղիցի գլուխ ամենայն
բնակչացս Գաղաադու ։

## ԳԼ. ԺԱ

1 Եւ Յեփթայէ Գաղաադացի էր այր հզօր
զօրութեամբ , եւ նա որդի կնոջ պոռնկի.
2 եւ ծնաւ [8]Գաղաադու զՅեփթայէ ։ Եւ
ծնաւ կինն Գաղաադու նմա որդիս . եւ
հաստատեցան որդիք կնոջն , եւ մերժե-
ցին զՅեփթայէ , եւ ասեն ցնա , Ոչ
ժառանգեսցես ի տան հօր մերոյ , զի
3 որդի կնոջ պոռնկի ես դու ։ Եւ փախ-
եաւ Յեփթայէ յերեսաց եղբարց իւրոց ,
եւ բնակեցաւ յերկրին ի Տովբ . եւ ժո-
ղովէին առ Յեփթայէ արք սրիկայք ,
եւ ելանէին ընդ նմա ։
4 Եւ եղեւ յետ աւուրց , եւ պատե-
րազմեցան որդիքն Ամոնայ ընդ Իսրայե-
5 լացիսն ։ Եւ եղեւ յորժամ եռուն պա-
տերազմ որդիքն Ամոնայ ընդ Իսրայէլի՝
չոգան ծերք Գաղաադու առնուլ զՅեփ-

[5]Եբր. Մաոնացիք [6]Եբր. զՏէր. եւ նեղացաւ անձն նորա ընդ տառապանս [7]Եբր. ի Մասփա, այսպէս եւ այլուր [8]Եբր. Գաղաադ

6 թայէ յերկրէն Տովբայ։ Եւ ասեն ցՅեփ-
թայէ, Եկ եւ եղիցես մեզ ի զօրավար,
եւ տացուք պատերազմ ընդ որդիսն
7 Ամոնայ։ Եւ ասէ Յեփթայէ ցծերսն Գա-
ղաադու, Ո՞չ ապաքէն դուք ատեցէք
զիս, եւ հանէք ի տանէ հօր իմոյ, [1]եւ
արձակեցէք զիս ի ձէնջ.˝ եւ արդ զի՞
8 եկիք առ իս յորժամ նեղեցայքդ։ Եւ
ասեն ծերքն Գաղաադու ցՅեփթայէ,
[2]Ոչ այդպէս է. այլ եկաք˝ առ քեզ, եւ
երթիցես ընդ մեզ, եւ տացուք պա-
տերազմ ընդ որդիսն Ամոնայ. եւ եղի-
ցես մեզ ի գլուխ ամենայն բնակչացն
9 Գաղաադու։ Եւ ասէ Յեփթայէ ցծերսն
Գաղաադու, Եթէ դարձուցանիցէք զիս
պատերազմել ընդ որդիսն Ամոնայ, եւ
մատնեսցէ զնոսա Տէր առաջի իմ, ես
10 եղէ՞ց իշխան։ Եւ ասեն ծերքն Գաղա-
ադու ցՅեփթայէ, Տէր կացցէ լսօղ ի
միջի մերում, եթէ ոչ ըստ բանից քում
11 նոյնպէս եւ արասցուք։ Եւ գնաց Յեփ-
թայէ ընդ ծերսն Գաղաադու. եւ կա-
ցուցին զնա ժողովուրդն ի վերայ իւր-
եանց գլուխ եւ առաջնորդ. եւ խօսե-
ցաւ Յեփթայէ զամենայն զբանս իւր ա-
ռաջի Տեառն ի Մասփա։
12 Եւ առաքեաց Յեփթայէ հրեշտակս
առ թագաւոր որդւոցն Ամոնայ եւ ասէ,
Զի՞ կայ իմ եւ քո, զի եկեալ ես առ
13 իս պատերազմել յերկրի իմում։ Եւ ասէ
արքայ որդւոցն Ամոնայ ցհրեշտակսն
Յեփթայեայ, [3]Ընդէ՞ր˝ առ Իսրայէլ զեր-
կիր իմ յելանել իւրում յԵգիպտոսէ՝
յԱռնոնայ մինչեւ ցՅաբոկ եւ մինչեւ
ցՅորդանան. եւ արդ դարձո զնա առ
իս խաղաղութեամբ [1]եւ գնացից. եւ
14 դարձան հրեշտակքն առ Յեփթայէ˝։ Եւ
յաւել եւս Յեփթայէ առաքել հրեշտակս
15 առ արքայ որդւոցն Ամոնայ, Եւ ասէ
ցնա, Այսպէս ասէ [1]Իսրայէլ եւ˝ Յեփ-
թայէ. Ոչ առ Իսրայէլ զերկիրն Մովա-
բայ եւ զերկիր որդւոցն Ամոնայ յելա-
16 նել իւրեանց յԵգիպտոսէ. Այլ գնաց
Իսրայէլ ընդ անապատն մինչեւ ցծովն
17 Կարմիր, եւ եկն մինչեւ ցԿադէս. Եւ
առաքեաց Իսրայէլ հրեշտակս առ ար-
քայ Եդոմայ եւ ասէ, Թող անցից ընդ
երկիր քո. եւ ոչ անսաց արքայն Եդո-
մայ. եւ առաքեաց առ արքայն Մովա-
բու. եւ ոչ կամեցաւ. եւ նստաւ Իս-

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. Վասն այսորիկ դարձաք
[3] Եբր. Քանզի

18 րայէլ ի Կադէս։ Եւ շրջեցաւ ընդ անա-
պատն, եւ պատեցաւ զերկրաւն Եդոմայ
եւ զերկրաւն Մովաբայ. եւ եկն առ
արեւելիւք երկրին Մովաբու, եւ բանա-
կեցաւ յայնկոյս Առնոնայ, եւ ոչ մտին
ի սահմանս Մովաբու. քանզի Առնովն
19 էր սահման Մովաբու։ Եւ առաքեաց
Իսրայէլ հրեշտակս առ Սեհոն արքայ
Ամովրհացւոց՝ թագաւոր Եսեբոնայ [1]եւ
Ամովրհացւոց˝, եւ ասէ ցնա Իսրայէլ,
Թող անցից ընդ երկիր քո մինչեւ ցտե-
20 ղի իմ։ Եւ ոչ կամեցաւ Սեհոն զԻսրայէլ
անցանել ընդ սահմանս իւր. եւ ժողով-
եաց Սեհոն զամենայն ժողովուրդ իւր,
եւ բանակեցաւ յԱսսա. եւ ետ պատե-
21 րազմ ընդ Իսրայէլի։ Եւ մատնեաց Տէր
Աստուած Իսրայէլի զՍեհոն եւ զամե-
նայն այլն նորա ի ձեռս Իսրայէլի, եւ
եհար զնոսա, եւ ժառանգեաց Իսրայէլ
զերկիր Ամովրհացւոյն բնակելոյն երկ-
22 րին այնմիկ։ Եւ ժառանգեաց Իսրայէլ
զամենայն սահմանս Ամովրհացւոյն յԱռ-
նոնայ մինչեւ ցՅաբոկ, եւ յանապատէն
23 մինչեւ ցՅորդանան։ Եւ արդ Տէր Աս-
տուած Իսրայէլի եբարձ զԱմովրհացին
յերեսաց ժողովրդեան իւրոյ Իսրայէլի.
24 եւ դո՞ւ ժառանգիցես զնա։ Ո՞չ ապա-
քէն զոր ժառանգեցոյց քեզ Քամովս
աստուածն քո՝ զայն ժառանգեսցես. եւ
զամենայն զոր ժառանգեցոյց Տէր Աս-
տուած մեր յերեսաց [4]ձերոց՝ զայն մեք
25 ժառանգեսցուք։ Իսկ արդ՝ միթէ լա՞ւ
ինչ իցես դու քան զԲաղակ որդի Սեպ-
փովրայ՝ զարքայն Մովաբու. միթէ
մարտի՞ւ մարտեաւ ընդ Իսրայէլի, կամ
պատերազմաւ պատերազմեցա՞ւ ընդ նո-
26 սա, Ի բնակելն Իսրայէլի յԵսեբոն եւ
ի գաւառս նորա, եւ յԱրոյեր եւ ի գաւառս
նորա, եւ յամենայն քաղաքս որ առ
եզերբ [5]Յորդանանու ամս երեք հարիւր.
զի՞ է զի ոչ [6]թափեցիք զնոսա ի ժամա-
27 նակին յայնմիկ։ Եւ ես ոչ ինչ մեղայ
քեզ, եւ դու առնես ընդ իս չարու-
թիւն՝ տալ ընդ իս պատերազմ. դա-
տեսցէ Տէր որ դատելոցն է այսօր ի մէջ
որդւոցն Իսրայէլի եւ ի մէջ որդւոցն
28 Ամոնայ։ Եւ ոչ անսաց արքայ որդւոցն
Ամոնայ բանիցն Յեփթայեայ զորս ա-
ռաքեաց առ նա։
29 Եւ եղեւ ի վերայ Յեփթայեայ Հոգի
Տեառն, եւ անց ընդ Գաղաադ եւ ընդ

[4] Եբր. մերոց [5] Եբր. Առնովնայ [6] Եբր. թափեցեր

Մանասէ, եւ անց ընդ դիտանոցն Գա-
ղաադու, եւ ի դիտանոցէն Գաղաադու
30 յայնկոյս որդւոցն Ամոնայ։ Եւ ուխտեաց
Յեփթայէ ուխտ Տեառն եւ ասէ, Եթէ
մատնելով մատնեսցես զորդիսն Ամոնայ
31 ի ձեռս իմ, Եւ եղիցի որ ելանելով ե-
լանիցէ ի դրանց տան իմոյ ընդ առաջ իմ
ի դառնալն իմում խաղաղութեամբ յորդ-
ւոցն Ամոնայ, եղիցի՝ զի մատուցից զնա
32 Տեառն յողջակէզ։ Եւ անց Յեփթայէ առ
որդիսն Ամոնայ պատերազմել ընդ նոսա.
33 եւ մատնեաց զնոսա Տէր ի ձեռս նորա։ Եւ
եհար զնոսա յԱրոյէրայ մինչեւ ի մուտս
Մէննիթայ, քսան քաղաքս, մինչեւ
ցԱբէլ այգեստանեացն, հարուածս մե-
ծամեծս յոյժ. եւ վանեցան որդիքն
Ամոնայ յերեսաց որդւոցն Իսրայելի։
34 Եւ եկն Յեփթայէ ի Մասփա ի տուն
իւր. եւ ահա դուստր իւր ելանէր ընդ
առաջ նորա թմբկօք եւ պարուք. եւ
նա էր միամօր [1]սիրելի նորա, եւ ոչ
գոյր նորա բաց ի նմանէ ուստր կամ
35 դուստր։ Եւ եղեւ իբրեւ ետես զնա,
պատառեաց զհանդերձս իւր եւ ասէ,
Վա՜յ է ինձ, դուստր իմ, ընկճեցեր զիս,
[2]խոչընդակն եղեր ինձ". զի ես բացի
զբերան իմ [1]վասն քո" առ Տէր, եւ ոչ
36 կարացից դարձուցանել։ Եւ ասէ ցնա,
[3]Եթէ վասն իմ" բացեր զբերան քո առ
Տէր, արա զիս որպէս ել ի բերանոյ
քումմէ, փոխանակ զի արար քեզ Տէր
վրէժխնդրութիւն ի թշնամեաց քոց յորդ-
37 ւոցն Ամոնայ։ Եւ ասէ ցհայր իւր, Ա-
րա ինձ զբանս զայս. թողացո ինձ զեր-
կուս ամիսս, եւ երթայց շրջեցայց ընդ
լերինս եւ լացից զկուսութիւնս իմ ես
38 եւ ընկերք իմ։ Եւ ասէ ցնա, Երթ. եւ
արձակեաց զնա զերկուս ամիսս. եւ
չոգաւ ինքն եւ ընկերք իւր, եւ լաց
39 զկուսութիւն իւր ի վերայ լերանց։ Եւ
եղեւ յետ կատարելոյ երկուց ամսոցն,
դարձաւ առ հայր իւր. եւ արար նմա
զուխտն զոր ուխտեաց. եւ նա ոչ գի-
40 տէր զայր։ Եւ եղեւ ի կրօնս ի մէջ Իս-
րայէլի [1]ողբալ զդուստրն Յեփթայեայ".
աւուրց յաւուրս ժողովէին դստերք Իս-
րայէլի ողբալ զդուստրն Յեփթայեայ
Գաղաադացւոյ չորս աւուրս ի տարւոջ։

[1] Յեբր. [illegible] [2] Եբր. դու եւս եղեր ի նեղչաց իմոց [3] Եբր. Հայր իմ,

ԳԼ. ԺԲ

1 Եւ ժողովեցան որդիքն Եփրեմի եւ
եկին [4]ի Սեփենա, եւ ասեն ցՅեփթայէ,
Զի՞ է զի ելեր պատերազմել ընդ որ-
դիսն Ամոնայ, եւ զմեզ ոչ կոչեցեր եր-
թալ ընդ քեզ. արդ այրեսցուք հրով
2 զտուն քո ի վերայ քո։ Եւ ասէ ցնոսա
Յեփթայէ, [5]Այր զրկեալ էի ես եւ ժո-
ղովուրդ իմ, եւ որդիք Ամոնայ սաստա-
պեցուցանէին զիս յոյժ". եւ բողոք արկի
առ ձեզ, եւ ոչ փրկեցէք զիս ի ձեռաց
3 նոցա։ Եւ տեսի զի ոչ ոք էր որ փրկէր,
եւ եդի զանձն իմ ի ձեռին իմում, եւ
անցի առ որդիսն Ամոնայ, եւ մատնեաց
զնոսա Տէր ի ձեռս իմ. եւ արդ ընդէ՞ր
ելէք առ իս յաւուր յայսմիկ մարտնչել
4 ընդ իս։ Եւ ժողովեաց Յեփթայէ զա-
մենայն արս Գաղաադու եւ տայր պա-
տերազմ ընդ Եփրեմի. եւ հարին արք
Գաղաադու զԵփրեմ. [6]զի ասացին ապ-
րեալքն Եփրեմի, թէ Դուք Գաղաադա-
ցիք ի մէջ Եփրեմի եւ ի մէջ Մանասէի
5 էք"։ Եւ կալաւ Գաղաադ զկիրճս Յոր-
դանանու զԵփրեմի. եւ եղեւ իբրեւ ա-
սացին ապրեալքն Եփրեմայ, թէ Թող
[7]անցցուք, ասեն ցնոսա արք Գաղաա-
դու, Միթէ եւ դուք յԵփրեմէ՞ իցէք.
6 եւ ասեն, Ձեմք ի նոցանէ։ Եւ ասեն
ցնոսա, Տուք մեզ նշան ինչ, եւ ասա-
ցէք, Հասկ հասկ. եւ ոչ յաջողեցան
խօսել այնպէս. եւ կալան եւ կոտորե-
ցին զնոսա" յանցսն Յորդանանու. եւ
անկան ի ժամանակին յայնմիկ յԵփրեմէ
քառասուն եւ երկու հազարք։
7 Եւ դատեաց Յեփթայէ զԻսրայէլ ամս
վեց, եւ մեռաւ Յեփթայէ Գաղաա-
դացի, եւ թաղեցաւ ի քաղաքի իւրում
ի Գաղաադ։
8 Եւ դատեաց յետ նորա զԻսրայէլ [8]Եսե-
9 բոն ի Բեթղեհեմէ։ Եւ եղեն նորա ուս-
տերք երեսուն, եւ դստերք երեսուն
տուեալ արտաքս. եւ երեսուն կին ած

[4] Եբր. ի հիւսիս [5] Եբր. Այր կռուոյ եղէ ես եւ ժողովուրդ իմ, եւ որդիքն Ամոնայ յոյժ [6] Եբր. քանզի ասացեալ էր նոցա թէ Փախստեայք Եփրեմի էք դուք, Գաղաադացիք, ի մէջ Եփրեմի, ի մէջ Մանասէի [7] Եբր. անցից. ասեն ցնա արք Գաղաադու, Միթէ եւ դու յԵփրեմէ՞ իցես. եւ ասէ, Ոչ։ (6) Եւ ասեն ցնա, Ասա, Շիբբոլէթ, եւ նա ասէր, Սիբբոլէթ, եւ ոչ յաջողէր խօսել այնպէս, եւ ունէին զնա եւ կոտորէին զնա
[8] Եբր. Աբեսան

ուստերաց իւրոց արտաքուստ. եւ դատ-
10 եաց զԻսրայէլ ամս եւթն։ Եւ մեռաւ
[1]Եսեբոն եւ թաղեցաւ ի Բեթղեհէմ։
11 Եւ դատեաց յետ նորա զԻսրայէլ Ելոն
12 Զաբուղոնացի ամս տասն։ Եւ մեռաւ
Ելոն Զաբուղոնացի եւ թաղեցաւ յԵղիմ
յերկրին Զաբուղոնի։
13 Եւ դատեաց յետ նորա զԻսրայէլ Աբ-
14 դոն որդի Ելլեքայ Փարաթոնացի։ Եւ
եղեն նորա որդիք քառասուն, եւ երե-
սուն որդիք որդւոց նորա, որ հեծանէին
յեւթանասուն յաւանակս. եւ դատեաց
15 զԻսրայէլ ամս ութ։ Եւ մեռաւ Աբդոն
որդի Ելլեքայ Փարաթոնացի, եւ թա-
ղեցաւ [2]յԵփրաթոն, յերկրի Եփրեմայ
ի լերինն Ամաղեկայ։

## ԳԼ. ԺԳ

1 Եւ յաւելին որդիքն Իսրայելի առնել
չար առաջի Տեառն. եւ մատնեաց զնոսա
Տէր ի ձեռս [3]այլազգեաց ամս քառասուն։
2 Եւ եղեւ այր մի ի Սարաայ ի ցեղէ
Դանայ, եւ անուն նորա Մանովէ. եւ
3 կին նորա ամուլ էր եւ ոչ ծնանէր։ Եւ
երեւեցաւ հրեշտակ Տեառն կնոջն, եւ
ասէ ցնա, Ահաւասիկ դու ամուլ ես եւ
ոչ է քո ծնեալ, եւ յղասցիս եւ ծնցիս
4 որդի։ Արդ զգոյշ լեր, զուցէ ըմպիցես
գինի եւ օղի, եւ մի՛ ուտիցես զամե-
5 նայն անսուրբ. Զի ահա յղասցիս դու
եւ ծնցիս որդի, եւ [4]երկաթ մի՛ ելցէ ի
գլուխ նորա. զի ուխտաւոր Աստուծոյ
եղիցի մանուկն անդստին յորովայնէ. եւ
նա սկսցի փրկել զԻսրայէլ ի ձեռաց
6 Փղշտացւոցն։ Եւ եմուտ կինն եւ ասէ
ցայր իւր, եթէ Այր Աստուծոյ եկն առ
իս, եւ տեսիլ նորա իբրեւ զտեսիլ հրեշ-
տակի Աստուծոյ [5]երեւելի յոյժ. եւ՞ հարցի
ցնա թէ Ուստի՛ ես, եւ զանուն իւր ոչ
7 պատմեաց ինձ։ Եւ ասէ ցիս, Ահա
յղասցիս դու եւ ծնցիս որդի. եւ արդ
մի՛ ըմպիցես գինի եւ օղի, եւ մի՛ ու-
տիցես զամենայն անսուրբ. զի ուխտա-
ւոր Աստուծոյ եղիցի մանուկն անդստին
յորովայնէ մօր իւրոյ մինչեւ ցօր մահ-
ուան իւրոյ։
8 Եւ աղաչեաց Մանովէ զՏէր եւ ասէ,
Ցիս, Տէր. այրն Աստուծոյ զոր առա-
քեցեր առ մեզ, եկեսցէ դարձեալ առ
մեզ եւ լուսաւորեսցէ զմեզ, թէ զինչ
9 արասցուք մանկանն որ ծնանիցի։ Եւ
լուաւ Աստուած ձայնի Մանովէի, եւ եկն
հրեշտակն Աստուծոյ միւս անգամ առ
կին նորա մինչդեռ նստէր յանդի. եւ
10 Մանովէ այր նորա չէր առ նմա։ Եւ
փութացաւ կինն եւ ընթացաւ պատմեաց
առն իւրում եւ ասէ ցնա, Ահա երեւե-
ցաւ ինձ այրն որ եկն առ իս յաւուր
11 յայնմիկ։ Եւ յարեաւ գնաց Մանովէ զհետ
կնոջ իւրոյ, եւ եկն առ այրն եւ ասէ
ցնա, Եթէ դո՞ւ իցես այրն որ խօսեցար
ընդ կնոջն. եւ ասէ հրեշտակն, Ես եմ։
12 Եւ ասէ Մանովէ, Արդ դարձցի բա-
նին քոյոյ, զի՞նչ լինիցին իրաւունք ման-
13 կանն եւ գործք նորա։ Եւ ասէ հրեշ-
տակն Տեառն ցՄանովէ, յամենայնէ զոր
14 ասացի կնոջդ՝ զգոյշ լինիցի. Յամենայնէ
որ ելանէ յորթոյ՝ մի՛ կերիցէ, եւ գինի
եւ օղի մի՛ արբցէ, եւ զամենայն ան-
սուրբ մի՛ կերիցէ. յամենայնէ զոր պա-
տուիրեցի նմա՝ զգոյշ լինիցի։
15 Եւ ասէ Մանովէ ցհրեշտակն, Թող
բռնադատեսցուք զքեզ, եւ արասցուք
16 առաջի քո ուլ մի յայծեաց։ Եւ ասէ
հրեշտակն Տեառն ցՄանովէ, Եթէ բռնա-
դատեսցես զիս, ոչ կերայց ի հացից
քոց, եւ եթէ արասցես ողջակէզ՝ Տեառն
մատուսցես զնա. զի ոչ գիտաց Մանովէ
17 թէ հրեշտակ Տեառն իցէ։ Եւ ասէ Մա-
նովէ ցհրեշտակն Տեառն, Զի՞նչ անուն
է քեզ, զի յորժամ եկեսցէ բանն քո,
18 փառաւորեսցուք զքեզ։ Եւ ասէ ցնա
հրեշտակն Տեառն, Զի՞ հարցանես զան-
19 ուանէ իմմէ, եւ նա է սքանչելի։ Եւ
առ Մանովէ զուլն այծեաց [6]զզոհն, եւ
մատոյց ի վերայ վիմին՝ [7]Տեառն սքան-
չելարարի". եւ Մանովէ եւ կին նորա
20 հայէին։ Եւ եղեւ ընդ ամբառնալ բո-
ցոյն ի վերուստ ի սեղանոյն յերկինս՝
ամբարձաւ հրեշտակն Տեառն բոցովսե-
ղանոյն, եւ Մանովէ եւ կին նորա հա-
յէին. եւ անկան ի վերայ երեսաց իւր-
21 եանց յերկիր։ Եւ ոչ եւս յաւել երեւել
հրեշտակն Տեառն Մանովէի եւ կնոջ
նորա. յայնժամ գիտաց Մանովէ թէ
22 հրեշտակ Տեառն է։ Եւ ասէ Մանովէ
ցկինն իւր, Մահու մեռանիցիմք զի

[1]Եբր. Աբեսսան [2]Եբր. ի Փարաթոն [3]Եբր. Փղշտացւոց. Թարգմանիչք մեր զհետ Եբրեւոյ Յունին՝ ունին Փղշտացիք ի Հնգամատենին. իսկ յետ այնորիկ ուրեք՝ Այլազգիք, նոյնպէս ըստ Յունին. սակայն դարձ է իմանալ Փղշտացիք։ [4]Եբր. ածելի [5]Եբր. ահաւոր յոյժ. եւ ոչ

[6]Եբր. եւ զընծայն հացի [7]Եբր. Տեառն. եւ սքանչելիս եւ գործել

23 զԱստուած տեսաք։ Եւ ասէ ցնա կին
նորա, Եթէ կամեցեալ էր Տեառն սպա-
նանել զմեզ, ոչ ընդունէր ի ձեռաց մե-
րոց զողջակէզն եւ [1]զզոհն, եւ ոչ [2]լու-
սաւորէր մեզ զայն ամենայն ընդ ժա-
մանակս ժամանակս, եւ ոչ լսելի առնէր
24 մեզ զայն"։ Եւ ծնաւ կինն որդի, եւ
կոչեաց զանուն նորա Սամփսոն. եւ ա-
ճեաց մանուկն, եւ օրհնեաց զնա Տէր։
25 Եւ սկսաւ Հոգի Տեառն շրջել ընդ նմա
ի բանակին Դանայ, ի մէջ Սարաայ եւ
ի մէջ Եսթաւուղայ։

ԳԼ. ԺԴ

1 Եւ էջ Սամփսոն ի Թամնաթա, եւ ե-
տես կին մի ի Թամնաթա ի դստերացն
այլազգեաց, [3]եւ հաճոյ թուեցաւ առաջի
2 նորա." Եւ ել պատմեաց հօր իւրում եւ
մօր իւրում եւ ասէ, Կին մի տեսի ի
Թամնաթա ի դստերացն այլազգեաց. եւ
3 արդ առէք զնա ինձ կնութեան։ Ասեն
ցնա հայր եւ մայր իւր, Միթէ ո՞չ գուցէ
ի դստերաց եղբարց քոց եւ յամենայն
ժողովրդեան իմում կին, զի երթիցես
դու առնուլ կին յայլազգեաց անթլփա-
տից. եւ ասէ Սամփսոն ցհայր իւր,
Զնա առ ինձ, զի նա հաճոյ է աչաց ի-
4 մոց։ Եւ հայր նորա եւ մայր նորա ոչ
գիտացին թէ ի Տեառնէ է, զի [4]հատու-
ցումն խնդրիցէ" նա յայլազգեացն. եւ
ի ժամանակին յայնմիկ այլազգիքն տի-
րէին Իսրայելի։
5 Եւ էջ Սամփսոն եւ հայր նորա եւ
մայր իւր ի Թամնաթա. եւ խոտորեցաւ
Սամփսոն յայգեստանն Թամնաթայ, եւ
ահա կորիւն մի առիւծուց գոչեաց
6 ընդդէմ նորա։ Եւ յաջողեցաւ ի վերայ
նորա Հոգի Տեառն, եւ ճեղքեաց զնա
իբրեւ զուլ մի այծեաց, եւ ոչ ինչ գոյր
ի ձեռին նորա. եւ ոչ պատմեաց հօր
7 իւրում եւ մօր իւրում զոր արար։ Եւ
իջին խօսեցան ընդ կնոջն. եւ հաճոյ
թուեցաւ առաջի Սամփսոնի։
8 Եւ դարձաւ յետ աւուրց առնուլ զնա.
եւ խոտորեցաւ տեսանել զգէշ առիւ-
ծուն, եւ ահա գունդ մեղուաց [5]ի բերան
9 առիւծուն եւ մեղր. Եւ ա՛ռ զայն [6]ի
բերան իւր, եւ երթալով երթայր եւ
ուտէր. չոգաւ առ հայր իւր եւ առ
մայր իւր, եւ ետ նոցա եւ կերան. եւ
ոչ պատմեաց նոցա թէ [7]ի բերանոյ ա-
ռիւծուն եհան զմեղրն։
10 Եւ էջ հայր նորա առ կինն, եւ արար
անդ Սամփսոն [8]հարսանիս զեւթն օր".
11 զի այնպէս առնէին երիտասարդք։ Եւ
եղեւ [9]ի զարհուրել նոցա ի նմանէ",
կացուցին առ նա ընկերս երեսուն, եւ
էին ընդ նմա։
12 Եւ ասէ ցնոսա Սամփսոն, Արկից ձեզ
առասպել, եթէ առեղծանելով առեղծա-
նիցէք զնա ինձ զեւթն օր խրախութեանս
եւ գտանիցէք, տաց ձեզ երեսուն պաստա-
ռակալ եւ երեսուն պատմուճան հան-
13 դերձից. Ապա թէ ոչ կարիցէք առեղ-
ծանել ինձ, տայցէք դուք ինձ երեսուն
պաստառակալ եւ երեսուն պատմուճան
հանդերձից. եւ ասեն ցնա, Արկ մեզ
14 զառասպելն քո, եւ լուիցուք զնա։ Եւ
ասէ ցնոսա, Ի կերչէ ել կերակուր, եւ
ի հզօրէ ել քաղցր։ Եւ ոչ կարացին
առեղծանել զառասպելն նորա զերիս
15 աւուրս։ Եւ եղեւ յաւուրն [10]չորրորդի,
եւ ասեն ցկինն Սամփսոնի, Պատրեա
զայր քո եւ պատմեսցէ քեզ զառաս-
պելն, գուցէ այրիցեմք զքեզ եւ զտուն
հօր քո. թէ աղքատացուցանե՞լ կոչեցեր
16 զմեզ այսր։ Եւ լայր կինն Սամփսոնի
առ նա եւ ասէ ցնա, Ատեցեր զիս եւ
ոչ սիրեցեր զիս. զի զառասպելն զոր
արկեր որդւոց ժողովրդեան իմոյ՝ ինձ
ոչ պատմեցեր։ Եւ ասէ ցնա Սամփսոն,
Ահա հօր եւ մօր իմոյ ոչ պատմեցի, եւ
17 արդ քե՞զ պատմիցեմ։ Եւ լայր առ նա
զեւթն օր յորս էր խրախութիւնն. եւ
եղեւ յաւուրն եւթներորդի պատմեաց
նմա քանզի թախանձեաց զնա. եւ նա
18 պատմեաց որդւոց ազգին իւրոյ։ Եւ ա-
սեն ցնա արք քաղաքին յաւուրն եւթ-
ներորդի յառաջ քան զմտանել արեգա-
կանն, Զի՞նչ քաղցրագոյն քան զմեղր,
կամ զի՞նչ հզօրագոյն քան զառեւծ։ Եւ
ասէ ցնոսա Սամփսոն, Եթէ ոչ [11]ճնչեալ
էր զերինջն իմ", ոչ գտանէիք զառաս-
19 պելն իմ։ Եւ յաջողեցաւ ի վերայ նորա
Հոգի Տեառն, եւ էջ յԱսկաղոն եւ ե-
հար անդ արս երեսուն. եւ ա՛ռ ետ
զպատմուճանս առեղծանելեաց առաս-
պելին. եւ բարկացաւ սրտմտութեամբ

[1] Եբր. զընծայն հացի [2] Եբր. ցուցանէր մեզ զայս ամենայն, եւ ի ժամանակի աստ ոչ տայր մեզ լսել այսպիսի ինչ [3] Եբր. դ—լ—ուէ [4] Եբր. պատճառս խնդրէր [5] Եբր. ի մարմնի [6] Եբր. ի ձեռս

[7] Եբր. ի մարմնոյ [8] Եբր. խրախութիւն [9] Եբր. իբրեւ տեսին զնա [10] Եբր. եւթներորդի [11] Եբր. արօրադիր լեալ էր ձեր երինջաւ իմով

20 Սամփսոն, եւ եկ ի տուն հօր իւրոյ։ Եւ
ամուսնացաւ կինն Սամփսոնի ընդ հա-
ցեբիցուն նորա որ էր նորա ընկեր։

Գլ. ԺԵ

1 Եւ եղեւ յետ աւուրց, յաւուրս հնձոց
ցորենոյ, այց արար Սամփսոն կնոջ իւ-
րում, ածեալ ուլ մի յայծեաց, եւ ասէ,
Մտից առ կին իմ ի սենեակ. եւ ոչ
եթող զնա հայրն նորա մտանել առ նա։
2 Եւ ասէ հայրն նորա, Ասելով ասացի
թէ ատեցեր զնա, եւ ետու զնա ընկերի
քում, ո՞չ աւանիկ քոյր նորա կրսեր
լաւագոյն է քան զնա, եղիցի սա քեզ
3 փոխանակ նորա։ Եւ ասէ Սամփսոն,
Անպարտ եմ ես միանգամայն յայլազգ-
եացդ, եթէ արարից ես ընդ զոսա չա-
4 րութիւն։ Եւ գնաց Սամփսոն, եւ կա-
լաւ երեք հարեւր աղուէս. եւ առ ջահս
եւ կապեաց զնոսա ընդ միմեանս ձետ
ընդ ձետ, եւ եդ զջահսն ի մէջ երկուց
ձետոցն, եւ կապեաց ի միջոցին զջահսն.
5 Եւ եռոյց հուր ի ջահսն, եւ արձակեաց
յոռ այլազգեացն. եւ այրեաց [1]զօրանն,
եւ զյառաջագոյն հնձեալսն" ի բարդից
մինչեւ ցկանգնաւորն, եւ մինչեւ ցայ-
6 գիս եւ ցձիթենիս։ Եւ ասեն այլազ-
գիքն, Ո՞ արար զայս։ Եւ ասեն, Սամ-
փսոն փեսայ Թամնացւոյն. զի եհան
զկին նորա եւ ետ ընկերի նորա։ Եւ
ելին այլազգիքն եւ այրեցին [1]զտուն հօր
նորա, եւ" զկինն եւ զհայր նորա հրով։
7 Եւ ասէ ցնոսա Սամփսոն, [2]Եթէ զոյն
չափ եւս առնիցէք, սակայն ոչ հանգե-
ցայց. այլ զվրէժ իմ յիւրաքանչիւր ու-
8 մեքէ ի ձէնջ խնդրեցից"։ Եւ եհար զնոսա
ի սրունից մինչեւ ցերանս հարուածս մե-
ծամեծս. եւ էջ բնակեցաւ [3]առ հեղե-
ղատուն յայրին" Ետամայ։
9 Եւ ելին այլազգիքն, եւ բանակեցան
10 զՅուդայիւ, եւ [4]անկան զԸլքեաւ"։ Եւ
ասէ ցնոսա այր Յուդայ, Ընդէ՞ր ելէք
ի վերայ իմ. եւ ասեն այլազգիքն,
Կապել զՍամփսոն ելաք, եւ առնել ընդ
11 նա զոր օրինակ արար ընդ մեզ։ Եւ
իջին երեք հազարք արանց Յուդայ ի
ծագ վիմին Ետամեայ, եւ ասեն ցՍամ-
փսոն, Ո՞չ գիտես զի իշխեն մեզ այ-
լազգիքն, եւ ընդէ՞ր արարեր զայն ընդ
մեզ. եւ ասէ ցնոսա Սամփսոն, Որպէս
արարին ընդ իս, նոյնպէս արարի ընդ
12 նոսա։ Եւ ասեն ցնա, Կապել զքեզ
իջաք, եւ մատնել ի ձեռս այլազգեացն.
եւ ասէ ցնոսա Սամփսոն, Երդուարուք
ինձ դուք չսպանանել զիս [4]եւ տուք զիս
ցնոսա. եւ դուք մի՛ երբեք պատահիցէք
13 ինձ"։ Եւ երդուան նմա եւ ասեն, Ոչ,
այլ կապելով կապեսցուք զքեզ, եւ
տացուք ի ձեռս նոցա. բայց մահու ոչ
սպանցուք զքեզ. եւ կապեցին զնա [5]երիւք
կարօլք նորովք, եւ հանին զնա ի վիմէն։
14 Եւ եկն մինչեւ ցԾնօտն. եւ այլազ-
գիքն աղաղակեցին եւ ընթացան ընդ-
դէմ նորա. եւ յաջողեցաւ ի վերայ նո-
րա Հոգի Տեառն, եւ եղեն կարքն ի
բազուկս նորա իբրեւ զխծուծ յորժամ
ի հուր հոտոտիցի, եւ հոսեցան կա-
15 պանքն ի բազկաց նորա։ Եւ եգիտ
ծնօտ մի իշոյ [6]ընկեցեալ, ձգեաց զձեռն
իւր եւ առ զնա, եւ եհար նովաւ հա-
16 զար այր։ Եւ ասէ Սամփսոն, Ծնօտիւ
իշոյ [7]ջնջելով ջնջեցից զնոսա, զի" ծնօտիւ
17 իշոյ կոտորեցի հազար այր։ Եւ եղեւ
իբրեւ կատարեաց զխօսսն, ընկէց զծնօտն
ի ձեռանէ իւրմէ. եւ կոչեաց զտեղին
[8]Կոտորած ծնօտի։
18 Եւ ծարաւեցաւ յոյժ, եւ աղաղակ-
եաց առ Տէր եւ ասէ, Դու յաջողեցեր
ձեռամբ ծառայի քո զփրկութիւնս զայս
մեծ. եւ արդ մեռանիցի՞մ ի ծարաւոյ,
եւ անկանիցի՞մ ի ձեռս անթլփատից։
19 Եւ եբաց [9]Տէր զծակ ծնօտին", եւ ել
ի նմանէ ջուր, եւ արբ. եւ դարձաւ
ոգի իւր առ ինքն եւ զօրացաւ. վասն
այնորիկ կոչեաց զանուն նորա [10]Աղբիւր
20 անուանեալ ծնօտի" մինչեւ ցայսօր։ Եւ
դատեաց զԻսրայէլ յաւուրս այլազգեացն
ամս քսան։

Գլ. ԺԶ

1 Եւ չոգաւ Սամփսոն անտի ի Գազա,
եւ ետես անդ կին մի պոռնիկ, եւ եմուտ
2 առ նա։ Եւ ազդ եղեւ Գազացւոցն եւ
ասեն, Եկեալ է այսր Սամփսոն։ Եւ
պատեցին եւ դարանակալ եղեն նմա

[1] Յեբր. զոխորն [2] Եբր. Թէպէտեւ արարէք այդպէս, սակայն զվրէժ իմ խնդրեցից ի ձէնջ, եւ ապա դադարեցայց [3] Եբր. ի ծակ վիմին [4] Եբր. տարածեցան ի Լեքի (Լեքի նշանակէ ծնօտ։)

[5] Եբր. երկուք [6] Եբր. դալար [7] Եբր. շեղջ, շեղջս երկուս, [8] Եբր. Բլուր [9] Եբր. Աստուած զփոսն որ ի Լեքի [10] Եբր. Այնգորէ (որ նշանակէ Աղբիւր կոչողին) ի Լեքի

զգիշերն ողջոյն առ դրան քաղաքին, եւ
անշշունջ կային զգիշերն ողջոյն, եւ
ասեն, Աստ կացցուք մինչեւ ցառաւօտ,
3 եւ սպանցուք զնա։ Եւ ննջեաց Սամ-
փսոն մինչեւ ցմէջ գիշերոյն, եւ յարեաւ
զմէջ գիշերաւն, եւ թափեաց զդրունս
քաղաքին հանդերձ սեմովքն, եւ երարձ
զնոսա հանդերձ նգօքն, եւ եդ ի վերայ
ուսոց իւրոց, եւ եհան զնոսա ի գլուխ
լերինն որ է հանդէպ Քեբրոնի, [1]եւ եդ
զնոսա անդ։"
4 Եւ եղեւ յետ այսորիկ սիրեաց կին
մի առ եղերբ հեղեղատին Սովրեկայ,
5 եւ անուն նորա Դալիլա։ Եւ ելին առ
նա նախարարք այլազգեացն եւ ասեն,
Պատրեա զնա եւ տես ի՛ւ իցէ զօրու-
թիւն նորա մեծ, եւ կամ ի՛ւ կարաս-
ցուք նմա հնարս գտանել եւ կապել զնա
առ ի տկարացուցանել զնա. եւ մեք
տացուք քեզ այր իւրաքանչիւր հազար
6 եւ հարիւր արծաթոյ։ Եւ ասէ Դալիլա
ցՍամփսոն, Պատմեա ինձ ի՛ւ իցէ զօ-
րութիւն քո մեծ, եւ ի՛ւ կապիցիս առ
7 ի տկարացուցանելոյ զքեզ։ Եւ ասէ ցնա
Սամփսոն, Եթէ կապիցեն զիս եւթն
ջլօք գալարուն չխամեալովք, տկարացայց
8 եւ եղէց իբրեւ զմի ի մարդկանէ։ Եւ
բերին առ նա նախարարք այլազգեացն
եւթն ջիլս գալարս անխոնաւս, եւ նա
9 կապեաց զնա նոքօք։ Եւ դարանն նստէր
նմա ի շտեմարանի. եւ ասէ ցնա, Այ-
լազգիք հասեալ են ի վերայ քո, Սամ-
փսոն. եւ խզեաց զջիլսն՝ զոր օրինակ
խզիցի քուղ ի թօթափելոյ յորժամ ի
հուր հոտոտիցի. եւ ոչ ծանուցաւ զօ-
10 րութիւն նորա։ Եւ ասէ Դալիլա ցՍամ-
փսոն, Ահա խաբեցեր զիս եւ խօսեցար
սուտ. գոնէ արդ պատմեա ինձ թէ ի՛ւ
11 կապիցիս։ Եւ ասէ ցնա, Եթէ կապե-
լով կապեսցեն զիս [1]եւթն կարովք նո-
րովք, որովք չիցէ գործեալ գործ, տկա-
րացայց եւ եղէց իբրեւ զմի ի մարդկանէ։
12 Եւ ա՛ռ Դալիլա կարս նորս, եւ կապ-
եաց զնա նոքօք, եւ ասէ ցնա, Այլազ-
գիք հասեալ են ի վերայ քո, Սամ-
փսոն. եւ դարանն նստէր նմա ի շտեմա-
րանի. եւ խզեաց զայն ի բազկաց իւ-
13 րոց իբրեւ զասղանի։ Եւ ասէ Դալիլա
ցՍամփսոն, Մինչեւ ցե՞րբ խաբիցես զիս,
եւ խօսիցիս ընդ իս սուտ. արդ պատմեա
ինձ ի՛ւ կապիցիս։ Եւ ասէ ցնա, Եթէ
անկցես զեւթանեսին գիսակս գլխոյ ի-
մոյ ընդ ազբին, [2]եւ վարեսցես ցցովք
ընդ որմն, եղէց տկարացեալ իբրեւ զմի
14 ի մարդկանէ։ Եւ ննջեցոյց զնա Դալի-
լա, եւ ա՛ռ զեւթանեսին գիսակս գլխոյ
նորա հանդերձ ազբամբն, եւ վարեաց
ցցովք ընդ որմն", եւ ասէ ցնա, Այ-
լազգիք հասեալ են ի վերայ քո, Սամ-
փսոն։ Եւ զարթեաւ ի քնոյ իւրմէ, եւ
կորզեաց զցիցսն հանդերձ ոստայնիւն
եւ ազբամբն [1]յորմոյ անտի. եւ ոչ ծա-
15 նուցաւ զօրութիւն նորա"։ Եւ ասէ ցնա
Դալիլա, Զիա՞րդ ասես թէ Սիրեցի զքեզ,
եւ սիրտ քո չէ ուղիղ ընդ իս. այս ե-
րիցս անգամ խաբեցեր զիս, եւ ոչ
պատմեցեր ինձ թէ ի՛ւ իցէ զօրութիւն
16 քո մեծ։ Եւ եղեւ իբրեւ վտանգեաց
զնա բանիւք [3]զգիշերն ողջոյն" եւ թա-
խանձեցոյց զնա, եւ պարտասեցոյց զնա
17 մինչեւ ցմահ, Պատմեաց նմա զամե-
նայն ինչ ի սրտէ իւրմէ, եւ ասէ ցնա,
Ածելի ոչ [4]ելցէ ի գլուխ իմ, զի ուխ-
տաւոր Աստուծոյ եմ ես յորովայնէ մօր
իմոյ. ապա թէ գերծուցում, մեկնեսցի
յինէն զօրութիւն իմ, եւ տկարացայց
եւ եղէց իբրեւ զամենայն մարդիկ։
18 Իբրեւ ետես Դալիլա եթէ պատմեաց
նմա զամենայն ինչ ի սրտէ իւրմէ, ա-
ռաքեաց կոչեաց զնախարարս այլազգ-
եացն եւ ասէ, Ելէք [5]միանգամայն, զի
պատմեաց ինձ զամենայն ի սրտէ իւրմէ։
Եւ ելին առ նա [1]ամենայն նախարարք
այլազգեացն, եւ բերին զարծաթն ի
19 ձեռս իւրեանց։ Եւ ննջեցոյց զնա ի մէջ
ծնգաց իւրոց. եւ կոչեաց վարսավիրայ,
եւ եգերծ զեւթանեսին գիսակս գլխոյ
նորա. եւ սկսաւ թօշնել, եւ մեկնեցաւ
20 ի նմանէ զօրութիւն նորա։ Եւ ասէ
Դալիլա, Այլազգիք հասեալ են ի վերայ
քո, Սամփսոն։ Եւ զարթեաւ ի քնոյ
իւրմէ, եւ ասէ, Ելից եւ արարից որ-
պէս միշտ, եւ թօթափեցից. եւ նա ոչ
21 գիտէր թէ Տէր մեկնեցաւ ի նմանէ։ Եւ
կալան զնա այլազգիքն, եւ բրեցին զաչս
նորա. եւ իջուցին զնա ի Գազա, եւ
կապեցին զնա երկաթի կապանօք. եւ
աղայր ի տան բանտին։
22 Եւ սկսաւ մազ գլխոյ նորա բուսանել
23 յետ գերծելոյն։ Եւ իշխանք այլազգեացն
ժողովեցան զոհել զոհ մեծ Դագոնայ

[1] Յեբր. պարան

[2] Եբր. (14) Եւ Դալիլա վարեաց ցցովք [3] Եբր. զամենայն աւուրս [4] Եբր. ել [5] Եբր. զայս նուագ

աստուծոյն իւրեանց, եւ ուրախ լինել.
եւասէին, Մատնեաց աստուած մեր
զՍամփսոն թշնամի մեր ի ձեռս մեր։
24 Իբրեւ տեսին ժողովուրդն, օրհնէին
զաստուած իւրեանց. զի ասացին թէ
Մատնեաց աստուած մեր զթշնամին մեր
ի ձեռս մեր, եւ զապականիչ երկրի մե-
րոյ, որ յաճախեաց զվիրաւորս մեր։
25 Եւ եղեւ իբրեւ զուարթացան սիրտք
իւրեանց, ասեն, Կոչեցէք զՍամփսոն
[1]ի տանէ բանտին˝, եւ խաղասցէ առաջի
մեր. եւ կոչեցին զՍամփսոն ի տանէ
բանտին, եւ [2]խաղային նովաւ˝. եւ կա-
26 ցուցին զնա ի մէջ [1]երկուց սեանցն։ Եւ
ասէ Սամփսոն ցպատանին որ ունէր
զձեռանէ նորա. Թող ատր ինձ եւ զննե-
ցից զսիւնս յորոց վերայ տունս հաս-
27 տատեալ կայ, եւ յեցայց ի նոսա։ Եւ
տունն լի էր արամբք եւ կանամբք. եւ
անդ ամենայն նախարարք այլազգեացն.
եւ ի տանիսն իբրեւ երեք հազարք, արք
եւ կանայք որ տեսանէին զխաղն Սամ-
28 փսոնի։ Եւ աղաղակեաց Սամփսոն առ
Տէր եւ ասէ, Տէր, Տէր [1]զօրութեանց,
յիշեա զիս. եւ զօրացո զիս զայս եւս
մի նուագ, Աստուած, եւ խնդրեցից
զվրէժ խնդրութիւն իմ փոխանակ երկուց
29 աչաց իմոց յայլազգեաց աստի։ Եւ բուռն
եհար Սամփսոն զերկոցունց սեանցն
միջնոց, յորոց վերայ տունն հաստատեալ
կայր, եւ յեցաւ ի նոսա, ի մին աջով
30 իւրով եւ ի միւսն ձախով իւրով։ Եւ
ասէ Սամփսոն, Մեռցի անձն իմ ընդ
այլազգիս. եւ [3]չարժեաց զօրութեամբ.
եւ անկաւ տունն ի վերայ ամենայն նա-
խարարացն եւ ի վերայ ամենայն ժողո-
վոյն որ ի նմա. եւ էին մեռեալքն զորս
մեռոյց Սամփսոն ի մահուն իւրում,
առաւել քան զորս սպան ի կենդանու-
31 թեան իւրում։ Եւ իջին եղբարք նորա
եւ ամենայն տուն հօր նորա, եւ բար-
ձին եւ հանին թաղեցին զնա ի մէջ
Սարաայ եւ ի մէջ Եսթաւուղայ ի գե-
րեզմանի Մանովայ հօր իւրոյ. եւ նա
դատեաց զԻսրայէլ ամս քսան։

ԳԼ. ԺԷ

1 Եւ եղեւ այր ի լեռնէն Եփրեմայ, եւ
2 անուն նորա Միքա։ Եւ ասէ ցմայր իւր,

[1] Յեբր. գոմուն [2] Եբր. խաղաց առաջի նոցա
[3] Եբր. խոնարհեցաւ

[4]Զհազար եւ զհարիւր արծաթոյն զոր
առեր առ քեզ, եւ երդուար եւ ասես
յականջս իմ թէ˝ արծաթն առ իս է, ես
առի զայն. եւ ասէ մայր նորա, Օրհ-
նեալ լիցիս, որդեակ իմ, ի Տեառնէ։
3 Եւ դարձոյց անդրէն զհազար եւ զհա-
րիւր արծաթոյն առ մայր իւր. եւ ասէ
մայր նորա, Սրբելով սրբեցի զարծաթն
Տեառն ի ձեռանէ իմմէ [5]եւ առանձինն˝,
առնել դրօշեալ եւ ձուլածոյ. եւ արդ դար-
4 ձուցից զնա առ քեզ։ Եւ դարձոյց զար-
ծաթն առ մայր իւր, եւ առ մայր նորա
երկերիւր արծաթոյ, եւ ետ զայն ցձու-
լիչ, եւ արար զայն դրօշեալ եւ ձուլա-
5 ծոյ. եւ եղեւ ի տան Միքայի։ Եւ տուն
Միքայի՝ նմա տուն Աստուծոյ. եւ արար
եփուդ եւ թերափ. եւ ելից զձեռս միոյ
յորդւոց իւրոց, եւ եղեւ նմա ի քահա-
6 նայ։ Յաւուրսն յայնոսիկ ոչ գոյր թա-
գաւոր Իսրայէլի, եւ այր իւրաքանչիւր
զհաճոյս աչաց իւրոց առնէր։
7 Եւ եղեւ պատանեակ մի ի Բեթղե-
հեմէ Յուդայ, յազգէ տոհմին Յուդայի,
եւ ինքն Ղեւտացի, եւ բնակէր նա անդ։
8 Եւ գնաց այրն ի քաղաքէ Բեթղեհեմի
Յուդայ պանդխտել ուր եւ գտանիցէ.
եւ եկն մինչեւ ցլեառնն Եփրեմի եւ
մինչեւ ցտունն Միքայ՝ առնել զճանա-
9 պարհ իւր։ Եւ ասէ ցնա Միքա, Ուստի՞
գաս. եւ ասէ ցնա, Ղեւտացի եմ ես ի
Բեթղեհեմէ Յուդայ, եւ երթամ պանդ-
10 ղխտանալ ուր եւ գտանիցեմ։ Եւ ասէ
ցնա Միքա, Նիստ աստ առ իս, եւ լեր
ինձ ի հայր եւ ի քահանայ. եւ ես տաց
քեզ տասն արծաթոյ [6]աւուրց յաւուրս˝
եւ զոյգս ձորձոյ եւ ռոճիկ որով կեցցես.
11 եւ չոգաւ Ղեւտացին։ Եւ սկսաւ պանդխ-
տանել առ առնն, եւ եղեւ նմա պա-
12 տանեակն իբրեւ զմի յորդւոց նորա։ Եւ
ելից Միքա զձեռս Ղեւտացւոյն, եւ ե-
ղեւ նմա պատանեակն ի քահանայ, եւ
13 էր ի տան Միքայ։ Եւ ասէ Միքա,
Այժմ գիտացի եթէ բարի արար ինձ Տէր,
զի եղեւ ինձ Ղեւտայն ի քահանայ։

ԳԼ. ԺԸ

1 Յաւուրսն յայնոսիկ ոչ գոյր թագաւոր
Իսրայէլի. եւ յաւուրսն յայնոսիկ ցեղն

[4] Եբր. Հազար եւ հարիւր արծաթոյն որ հանաւ ի քէն, եւ նզովեցեր եւ ասացեր եւս յականջս իմ, ահա [5] Եբր. որդւոյ իմում [6] Այսինքն՝ ամ յամէ

Դանայ խնդրէր իւր ժառանգութիւն
բնակելոյ. զի ոչ եհաս նմա ցաւուրն
ցայնոսիկ ի մէջ ցեղիցն Իսրայէլի ժա-
2 ռանգութիւն։ Եւ առաքեցին որդիքն
Դանայ ի տոհմից իւրեանց արս հինգ,
[1]այր ըստ ցեղի՝ իւրեանց, որդիս զօ-
րութեան ի Սարաայ եւ յԵսթաւուղայ,
լրտեսել զերկիրն եւ հետազօտել զնա.
եւ ասեն ցնոսա, Երթայք որոնեցէք
զերկիրն. եւ չոգան ի լեառնն Եփրեմայ
մինչեւ ցտունն Միքայ, եւ հանգեան
3 անդ։ Եւ մինչդեռ էին նոքա [2]ի տան
Միքայ, ծանեան զձայն պատանեկին
Ղեւտացւոյ, եւ խոտորեցան անդ եւ
ասեն ցնա, Ո՞ ած զքեզ այսր, եւ զի՞նչ
գործես դու աստ, եւ կամ զի՞նչ կայ
4 քո աստ։ Եւ ասէ ցնոսա, Այսպէս եւ
այսպէս արար ինձ Միքա, եւ կալաւ զիս
5 ի վարձու, եւ եղէ նմա ի քահանայ։ Եւ
ասեն ցնա, Աղէ հարց զԱստուած, եւ գի-
տասցուք եթէ յաջողեսցի՞ մեզ ճանապարհս
6 մեր յոր երթամք։ Եւ ասէ ցնոսա քահա-
նայն, Երթայք ի խաղաղութիւն. առաջի
Տեառն է ճանապարհ ձեր ընդ որ երթայք։
7 Եւ գնացին հինգեքին արքն, եւ չո-
գան ի Լայիսա. եւ տեսին զժողովուրդն
որ ի նմա, որ բնակեալ նստէր [3]յուսով՝
ըստ նմանութեան Սիդոնացւոցն հանդար-
տելոցն [4]յուսով. եւ ոչ բաւական լինե-
լոյ խօսել ումեք բան մի յերկրի զան-
ձուցն ժառանգաւորի. եւ՝ հեռի էին ի
Սիդոնէ, եւ բանք ինչ ոչ գոյին նոցա
8 ընդ [5]Ասորիս։ Եւ եկին հինգեքին արքն՝
առ եղբարս իւրեանց ի Սարաա եւ յԵս-
թաւուղ. եւ ասեն ցնոսա եղբարք իւր-
9 եանց, [6]Զի՞ նստիք դուք՝։ Եւ ասեն,
Արիք [7]ելցուք ի վերայ նոցա, զի մտաք
եւ շրջեցաք ընդ երկիրն մինչեւ ցԼայիսա,
եւ տեսաք ժողովուրդ բնակեալ ի նմա
յուսով համայն Սիդոնացւոց, եւ հեռի
են ի Սիդոնէ, եւ բանք ինչ ոչ գոյ նո-
ցա ընդ Ասորիս. արիք՝ եւ ելցուք ի
վերայ նոցա. զի ահա տեսաք զերկիրն,
եւ բարի է յոյժ, եւ դուք դադարեա՞լ
կայք. եւ սիրտ է՞ր վատանայք երթալ
10 մտանել ժառանգել զերկիրն։ Եւ եթէ
յորժամ երթայք, ունիք զազգն յու-
լացեալ եւ զերկիրն ընդարձակ. զի մատ-
նեաց զնա Աստուած ի ձեռս [8]մեր. տեղի
յորում ոչ գոյ պակասութիւն ամենայն
բանի որ ինչ իցէ յերկրի։
11 Եւ խաղացին անտի յազգատոհմութենէ
տոհմիցն Դանայ, ի Սարաայ եւ յԵսթաւ-
ուղայ, արք վեց հարիւր վառեալք զի-
12 նու պատերազմի։ Եւ ելին բանակեցան
ի Կարիաթարիմ Յուդայ. վասն այնորիկ
կոչեցաւ տեղին այն բանակետղ Դանայ
մինչեւ ցայսօր. որ է ի թիկանց Կարիա-
13 թարիմայ։ Եւ անցին անտի եւ եկին
մինչեւ ցլեառնն Եփրեմայ, եւ հասին
14 մինչեւ ի տունն Միքայի։ Պատասխանի
ետուն արքն հինգեքին որ երթեալ էին
լրտեսել զերկիրն Լայիսա, եւ ասեն
ցեղբարս իւրեանց, Եթէ գիտիցէ՞ք [9]զի
ի տունս յայսոսիկ եփուդ եւ թերափ եւ
դրօշեալ եւ ձուլածոյ. արդ գիտասջիք
15 զինչ առնիցէք. Եւ խոտորեցան անդ,
եւ մտին ի տուն պատանեկին Ղեւտացւոյ,
որ էր ի տան Միքայ, եւ հարցին զող-
16 ջունէ նորա։ Եւ վեց հարիւր արքն վառ-
եալք պատերազմական զինու իւրեանց
արձանացեալք կային առ մուտս դրանն
17 որ էին յորդւոցն Դանայ։ Եւ ելին հինգե-
քին արքն որ երթեալ էին լրտեսել զեր-
կիրն, յարձակեցան եւ առին զդրօշեալն
եւ զեփուդ եւ զթերափ եւ զձուլածոյ.
եւ քահանայն արձանացեալ կայր ի մուտս
դրանն. եւ վեց հարիւր արքն վառեալք
18 պատերազմական զինու։ Եւ նոքա մտին
ի տունն Միքայ, եւ առին զդրօշեալն եւ
զեփուդ եւ զթերափ եւ զձուլածոյ. եւ
ասէ ցնոսա քահանայն, Զի՞նչ գոր-
19 ծէք դուք։ Եւ ասեն ցնա, Կարկեաց,
ափիբերան լեր, եկ ընդ մեզ եւ լեր մեզ
ի հայր եւ ի քահանայ. միթէ լա՞ւ իցէ
լինել քեզ քահանայ տան միոյ առն,
քան լինել քահանայ ցեղի միոյ եւ ազգի
20 [10]Իսրայէլի։ Եւ զուարթացաւ սիրտ քա-
հանային, եւ առ զեփուդն եւ զթերափ
եւ զդրօշեալ [7]եւ զձուլածոյ՝, եւ եմուտ
21 ի մէջ զօրուն։ Եւ դարձան գնացին, եւ
[11]հարին համօրէն զտունն, եւ զստա-
ցուածն վայելչութեան նորա առաջի
22 նոցա՝։ Եւ ի հեռանալ նոցա ի տանէ
Միքայ, եւ [12]ահա Միքա եւ արքն որ

[1]Եբր. ի սահմանաց [2]Եբր. առ տան [3]Եբր. յանհոգս [4]Եբր. յանհոգս. եւ ոչ գոյր յերկրին յայնմիկ ճոխ որ նեղէր, եւ [5]Եբր. ումեք։ (8) Եւ եկին [6]Եբր. Զի՞ ձեզ [7]Եբր. պակասէ

[8]Եբր. ձեր [9]Եբր. զի գոն [10]Եբր. յԻսրայէլի [11]Եբր. եդին զտղայն եւ զանասունն եւ որ ինչ էր պատուական առաջի իւրեանց [12]Եբր. արքն որ ի տունս որ մերձ ի տունն Միքայ՝ ժողովեցան, հասին որդւոցն Դանայ. (23) Եւ բողոք բարձին առ որդիսն Դանայ, եւ դարձուցին

ի տունս նորա էին ընդ Միքայ, բողոք
23 բարձին եւ հասին որդւոցն Դանայ։ Եւ
դարձուցին՝՝ զերեսս իւրեանց որդիքն
Դանայ, եւ ասեն ցՄիքա, Զի՞ է [1]քեզ, զի՞
24 աղաղակես՝՝։ Եւ ասէ Միքա, Զի զաս-
տուածն իմ զոր արարի ինձ առէք, եւ
զքահանայն, եւ գնացէք. եւ զի՞նչ կայ
այսուհետեւ ինձ. եւ զի՞նչ է այդ զոր
25 ասէք ցիս թէ Զի՞ [2]աղաղակես։ Եւ ասեն
ցնա որդիքն Դանայ, Մի՛ լուիցի ձայն քո
ընդ մեզ, գուցէ պատահիցեն քեզ արք
դառնացեալք ոգւով, եւ [3]գնիցեն զանձն
26 քո եւ զանձն տան քո։ Եւ գնացին որ-
դիքն Դանայ զճանապարհս իւրեանց. եւ
իբրեւ ետես Միքա եթէ բռնաւորք քան
զնա են, դարձաւ ի տուն իւր։
27 Եւ նոքա առին զոր ինչ արարն Մի-
քա եւ զքահանայն նորա, եւ չոգան ի
Լայիսա՝ ի ժողովուրդն հանդարտացեալ
եւ վստահացեալ յուսով. եւ հարին զնոսա
սրով սուսերի, եւ զքաղաքն այրեցին։
28 Եւ ոչ ոք էր որ փրկէր. զի հեռի էին ի
Սիդոնացւոց, եւ բանք ինչ ոչ էին նո-
ցա ընդ ումեք ի մարդկանէ. եւ նա կայ ի
հովտի տանն Բոլբայ. եւ շինեցին զքա-
29 ղաքն եւ բնակեցան ի նմա։ Եւ կոչեցին
զանուն նորա Դան՝ ըստ անուան հօրն
իւրեանց որ եղեւ Իսրայելի. եւ էր ա-
նուն քաղաքին յառաջագոյն Լայիսա։
30 Եւ կանգնեցին իւրեանց որդիքն Դանայ
զդրօշեալն [4]Միքայ. եւ Յովնաթան որդի
Գերսոնի որդւոյ Մանասէի, ինքն եւ
որդիք իւր, էին քուրմք ցեղին Դանայ,
31 մինչեւ ցօր գերութեան երկրին։ Եւ
կարգեցին իւրեանց զդրօշեալն զոր ա-
րար Միքա, զամենայն աւուրս զորս էր
տունն Աստուծոյ ի Սելով։

ԳԼ. ԺԹ

1 Եւ եղեւ յաւուրսն յայնոսիկ, եւ թա-
գաւոր ոչ գոյր յԻսրայելի եւ էր այր Ղեւ-
տացի պանդխտեալ ի կողմանս լերինն
Եփրեմի. եւ առ իւր այն կին հարճ ի
2 Բեթղեհեմէ Յուդայ։ Եւ սարտեաւ ի
նմանէ հարճն իւր, եւ գնաց ի նմանէ
ի տուն հօր իւրոյ ի Բեթղեհէմ Յուդայ,
3 եւ եղեւ անդ [5]զերկս ամիսս։ Եւ յա-
րուցեալ այրն չոգաւ զհետ նորա, խօ-
սել ի սիրտ նորա հաշտեցուցանել զնա
ընդ իւր, եւ ածել միւսանգամ առ ինքն.

[1]Եբր. քեզ զի գումարեցար [2]Եբր. է քեզ [3]Եբր. կորուսցես [4]Յեբր. դրօշեալ [5]Եբր. զչորս

եւ պատանի իւր ընդ իւր եւ զոյգք ի-
շոյ. եւ [6]չոգան մինչեւ ցտուն հօր նո-
րա՝՝. իբրեւ ետես զնա հայր աղջկանն,
4 [7]եկն ընդ առաջ նորա՝՝։ Եւ առաւ զնա
ի ներքս աներ իւր, հայր աղջկանն, եւ
նստաւ առ նմա աւուրս երիս. եւ կերան
եւ արբին եւ ննջեցին անդ։
5 Եւ եղեւ յաւուրն չորրորդի կանխե-
ցին ընդ առաւօտն, եւ յարեաւ գնալ.
եւ ասէ հայր աղջկանն ցփեսայ իւր,
Հաստատեա զսիրտ քո պատառով միով
6 հացիւ, եւ ապա գնասջիք։ Եւ նստան
կերան եւ արբին ի միասին երկոքին. եւ
ասէ հայր աղջկանն ցփեսայ իւր, [8]Արդ
սկսեալ աստէն իսկ՝՝ ագիր, եւ զուար-
7 թասցի սիրտ քո։ Եւ յարեաւ այրն ի գնալ.
եւ բռնադատեաց զնա աներ իւր, եւ
8 նստաւ եւ անդէն ագաւ։ Եւ կանխեաց
ընդ առաւօտն յաւուրն հինգերորդի ի
գնալ. ասէ հայր աղջկանն, Հաստատեա
զսիրտ քո հացիւ, եւ [9]զբօսիր մինչեւ
շրջեսցի օրն՝՝. եւ կերան եւ արբին եր-
9 կոքին։ Եւ յարեաւ այրն գնալ, ինքն
եւ հարճն եւ պատանին իւր. եւ ասէ
[10]ցնա հայր աղջկանն, Ահա դարձաւ օրս
յերեկս, [11]աստէն ագիր եւ զուարթասցի
սիրտ քո, եւ կանխեսջիք վաղիւ ի ճա-
10 նապարհ քո եւ երթիցես յարկս քո։ Եւ
ոչ կամեցաւ այրն ագանել անդ, այլ
յարեաւ եւ գնաց. եւ եկն եհաս մինչեւ
ցհանդէպ Յեբուսայ, այն է Երուսաղէմ.
եւ ընդ նմա զոյգք իշոց համետելոց, եւ
հարճն իւր ընդ նմա։
11 Եւ նոքա հանդէպ Յեբուսայ, եւ օրն
խոնարհեցաւ յոյժ. ասէ պատանին ցտէր
իւր, Եկ խոտորեսցուք ի քաղաքն Յե-
12 բուսացւոց, եւ ագցուք ի նմա։ Եւ ասէ
ցնա տէր իւր, Ոչ խոտորեսցուք ի քա-
ղաքս օտարոտւոցս, յորում ոչ գուցէ
յորդւոցն Իսրայելի, այլ անցցուք մինչեւ
13 ցԳաբաա։ Եւ ասէ ցպատանին իւր, Եկ
մերձեսցուք ի մի ուրեք ի տեղեաց, եւ
անդ ագցուք ի Գաբաա կամ ի Հռամա։
14 Եւ անցին գնացին. եւ եմուտ նոցա ա-
րեգակն մերձ ի Գաբաա, որ է Բենիա-
15 մինի։ Եւ խոտորեցան անդր մտանել ա-
գանել ի Գաբաա. եւ եմուտ նստաւ ի

[6]Եբր. եմոյծ զնա կինն ի տուն հօր իւրոյ [7]Եբր. ուրախ եղեւ ընդ պատահելն նմա [8]Եբր. Հաճեաց, աղէ, եւ [9]Եբր. յամեցին մինչեւ ի տարաժամել աւուրն [10]Եբր. ցնա աներ նորա, [11]Եբր. աղէ, ագերուք. ահա տարաժամեալ է օրս, աստէն

հրապարակի քաղաքին . եւ ոչ էր այր որ
ժողովէր զնոսա ի տուն իւր ագանել ։
16 Եւ ահա այր մի ծեր եմուտ ի գործոյ
իւրմէ յանդոյ անագանի . եւ այրն ի
լեռնէ Եփրեմայ , եւ ինքն պանդխտեալ
էր ի Գաբաա եւ արք տեղւոյն՝ որդիք
17 Բենիամենի ։ Եւ ամբարձեալ զաչս իւր
ետես զայրն ուղեւոր ի մէջ հրապարակի
քաղաքին . եւ ասէ այրն ծեր , Ո՞ւր եր-
18 թաս եւ ուստի՞ գաս ։ Եւ ասէ ցնա ,
Անցանեմք մեք ի Բեթղեհեմէ Յուդայ
մինչեւ ցկողմանս լերինն Եփրեմայ . քան-
զի անտի եմ ես . եւ չոգայ մինչեւ
ցԲեթղեհէմ Յուդայ , եւ ի տուն [1]հօր
իմոյ" երթամ . եւ չիք այր որ ժողովիցէ
19 զմեզ ի տուն . Եւ յարդ եւ խոտ կայ ի-
շոց մերոց , եւ հաց եւ գինի ինձ եւ
[2]աղջկանդ եւ պատանւոյդ" . եւ չէ ինչ
պակասութիւն ամենայն իրաց [3]ծառայից
20 քոց" ։ Եւ ասէ այրն ծեր , Խաղաղու-
թիւն ընդ քեզ . ամենայն պակասու-
թիւնք քո զինեւ , բայց դու ի հրապա-
21 րակիդ մի՛ ագանիցիս ։ Եւ տարաւ զնա
ի տո՛ւն իւր , եւ արկ խոտ իշոցն , եւ
լուացին զոտս նոցա եւ կերան եւ արբին ։
22 Եւ ի զուարթանալ սրտից նոցա , եւ
ահա արք քաղաքին , արք՝ որդիք անօ-
րինաց , պատեցին զտունն եւ բախեցին
զդուրսն , եւ խօսեցան ընդ առնն ծերոյ
ընդ տեառն տանն եւ ասեն , Հան զայրդ
մտեալ ի տուն քո , զի գիտասցուք զդա ։
23 Եւ ել առ նոսա այրն տէր տանն , եւ
ասէ ցնոսա , Բա՛ լիցի ձեզ , եղբարք ,
մի՛ ինչ անզգամէք յետ մտանելոյ առնդ
այդորիկ ի տո՛ւն իմ . մի՛ առնէք զանզգա-
24 մութիւնդ զայդ ։ Ահաւասիկ դուստր
իմ կոյս , եւ հարճ նորա , հանից զնոսա
արտաքս , եւ լլկեցէք զնոսա , եւ արա-
րէք ընդ նոսա զինչ հաճոյ է յաչս ձեր .
եւ առնս այսմիկ մի՛ առնէք ըստ անզգա-
25 մութեան բանիդ այդորիկ ։ Եւ ոչ կա-
մեցան արքն անսալ . եւ ա՛ռ այրն զհարճն
իւր , եւ եհան զնա արտաքս . եւ գի-
տացին զնա , եւ լլկեցին զնա զգիշերն
ողջոյն մինչեւ ցառաւօտ , եւ արձակե-
26 ցին զնա ի ծագել առաւօտուն ։ Եւ եկն
կինն ընդ առաւօտն , եւ անկաւ առ
դրանդւոյ դրան տան առնն՝ ուր էր տէր
27 նորա , [4]եւ եհան զոգին" ։ Եւ յարեաւ
տէր նորա ընդ առաւօտն , եւ եբաց
զդուրս տանն եւ ել գնալ զճանապարհս
իւր , եւ ահա կինն հարճ նորա անկեալ
կայր առ դրանն , եւ ձեռն իւր ի վերայ
28 դրանդւոյն ։ Եւ ասէ ցնա, Արի եւ գնաս-
ցուք . եւ ոչ ետ նմա պատասխանի՝
[3]քանզի մեռեալ էր" ։ Եւ առ եհան զնա
յէշ , եւ յարեաւ այրն եւ չոգաւ ի տեղի
29 իւր ։ Իբրեւ եմուտ ի տուն իւր , ա՛ռ
սուր , եւ բուռն եհար զհարճէն իւրմէ
եւ յօշեաց զնա ըստ ոսկերաց իւրոց յեր-
կոտասան մասն . եւ առաքեաց զայն ընդ
30 ամենայն ցեղսն Իսրայելի ։ Եւ եղեւ զի ա-
մենայն որ տեսանէր՝ ասէր , թէ Ոչ եղեւ
եւ ոչ երեւեցաւ այսպէս յաւուրց ելանելոյ
որդւոցն Իսրայելի յերկրէն Եգիպտացւոց
մինչեւ ցայսօր . արդ առէք ձեզ վասն
այդորիկ խորհուրդ , եւ խօսեցարուք ։

Գլ . Ի

1 Եւ ելին ամենայն որդիքն Իսրայելի ,
եւ եկեղեցացաւ ժողովուրդն իբրեւ զայր
մի ի Դանայ մինչեւ ցԲերսաբէէ եւ
երկիրն Գաղաադու՝ առ Տէր ի Մասփա ։
2 Եւ [5]եկաց կողմն" ամենայն ժողովրդ-
եանն , [3]եւ ամենայն ցեղք Իսրայելի
յամենայն եկեղեցւոջ ժողովրդեանն Աս-
տուծոյ , չորեք հարիւր հազար [6]արանց
3 սուսերամերկաց ։ Եւ լուան որդիքն Բե-
նիամենի , եթէ ելին որդիքն Իսրայելի
ի Մասփա ։ Եւ ասեն որդիքն Իսրայելի ,
Խօսեցարուք թէ [7]ո՞ւր եղեւ այսպիսի
4 չարութիւն ։ Պատասխանի ետ այրն
Ղեւտացի այր կնոջն սպանելոյ , եւ
ասէ , Ի Գաբաա Բենիամենի եկի ես եւ
5 հարճ իմ ագանել ։ Եւ յարեան ի վերայ
իմ արք Գաբաացիք , եւ պատեցին շուրջ
զինեւ զտունն զցայգ , եւ զիս կամե-
ցան սպանանել . եւ զհարճն իմ լլկեցին
6 [3]եւ հեղձուցին", եւ մեռաւ . Եւ առի
զհարճն իմ եւ յօշեցի զնա , եւ առա-
քեցի յամենայն սահմանս ժառանգու-
թեան Իսրայելի . զի արարին զխսաս մեծ
7 եւ անզգամութիւն ի մէջ Իսրայելի ։ Եւ
ահաւասիկ [8]մեք ամենեքեան որդիք
Իսրայելի , տուք [9]մեզ բան եւ խորհուրդ ։
8 Եւ յարեաւ ամենայն ժողովուրդն իբրեւ
զայր մի , եւ ասեն , Ոչ մտցուք այր
իւրաքանչիւր ընդ յարկաւ իւրով , եւ ոչ
խոտորեսցուք այր իւրաքանչիւր ի տուն

[1]Եբր. Տեառն [2]Եբր. աղախնոյ քում եւ պա-
տանւոյդ որ ընդ ծառայս քո [3]3Եբր. պակասէ
[4]Եբր. մինչեւ ցառաւօտ

[5]Եբր. կացին իշխանք [6]Եբր. արանց հետեւակաց
[7]Եբր. զիա՞րդ [8]Եբր. դուք [9]Եբր. ձեզ

9 իւր ։ Եւ արդ այս բան է զոր արասցուք ընդ Գաբաա . ելցուք ի վերայ նո-
10 րա վիճակաւ ։ Բայց առցուք տասն այր
ի հարիւրոց յամենայն ցեղիցդ Իսրայելի,
եւ հարեւր ի հազարաց, եւ հազարս ի
բիւրուց . առնուլ պաշար զօրուն բանակել
վանդակ երթողաց ի Գաբաա Բենիամինի, [1]ըստ ամենայն անզգամութեան
11 զոր արարին ի մէջ Իսրայելի ։ Եւ ժողովեցաւ ամենայն Իսրայէլ իբրեւ զայր մի
եկեալք ի քաղաքաց ։
12 Եւ առաքեցին ցեղքն Իսրայելի առ
յամենայն ցեղն Բենիամինի եւ ասեն,
Զի՞նչ է չարութիւնդ այդ եղեալ ի միջի
13 ձերում ։ Եւ արդ [2]տուէք զարսն զամպարիշտս զԳաբաացիս զորդիսն Բելիարայ,
եւ սպանցուք զնոսա եւ բարձցուք զչարիսն յԻսրայելէ . եւ ոչ կամեցան որդիքն Բենիամինի լսել ձայնի եղբարց
14 իւրեանց որդւոցն Իսրայելի ։ Եւ ժողովեցան որդիքն Բենիամինի ի քաղաքաց
իւրեանց ի Գաբաա, ելանել ի պատե-
15 րազմ ընդ որդիսն Իսրայելի ։ Եւ հանդէս արարին որդիքն Բենիամինի յաւուր
յայնմիկ յիւրաքանչիւր քաղաքաց, քսան
եւ [3]հինգ հազար արանց սուսերամերկաց . թող զբնակիչս Գաբաացւոց, որ
16 անցին ի հանդիսի՝ եւթն հարիւր այր, Երիտասարդք ընտիրք յամենայն ժողովրդենէն, [4]յերկոցունց ձեռաց աջողակք".
ամենեքին նոքա պարսաւորք, որ ձգէին
17 քարինս եւ ի մազէ ոչ վրիպէին ։ Եւ ամենայն այր Իսրայելի անցին ի հանդէսի,
առանց որդւոցն Բենիամինի, չորեք
հարեւր հազարք արանց սուսերամերկաց,
ամենեքին նոքա արք պատերազմօղք ։
18 Եւ յարեան ելին [5]ի Բեթէլ, եւ հարցին զԱստուած եւ ասեն որդիքն Իսրայելի, Ո՞վ ելցէ մեզ առաջնորդ պատերազմել ընդ որդիսն Բենիամինի. եւ
ասէ Տէր, Յուդա [6]ելցէ առաջնորդ" ։
19 Եւ յարեան որդիքն Իսրայելի ընդ ա-
20 ռաւօտն եւ բանակեցան զԳաբաաւ ։ Եւ
ել այր Իսրայելացի պատերազմել ընդ
Բենիամինի . եւ ճակատեցան ընդ նոսա
այր Իսրայելի ի պատերազմ առ Գաբաաւ ։
21 Եւ ելին որդիքն Բենիամինի ի քաղաքէն, եւ սատակեցին յԻսրայելէ քսան
եւ երկու հազար արանց յաւուր յայն-
22 միկ, եւ արկին տապաստ յերկիր ։ Եւ
զօրացան զարձեալ այր Իսրայելացի, եւ
յաւելին ճակատել ի պատերազմի ի տեղւոջ ուր ճակատեցան յաւուրն առաջ-
23 նում ։ Եւ ելին որդիքն Իսրայելի եւ
լացին առաջի Տեառն մինչեւ ցերեկոյ .
եւ հարցին զՏէր եւ ասեն, Եթէ յաւելցո՞ւք մատչել ի պատերազմ ընդ Բենիամինի եղբօր մերում . եւ ասէ Տէր, Ելէք ի
24 վերայ նոցա ։ Եւ ելին որդիքն Իսրայելի ի
պատերազմ ընդ որդիսն Բենիամինի յա-
25 ւուրն երկրորդի ։ Եւ ել Բենիամին ընդդէմ
նոցա [7]ի պատերազմ յաւուրն երկրորդի.
եւ սատակեաց միւսանգամ ի ժողովրդենէ
անտի [8]ութ հազար արանց յերկիր, ամենեքեան նոքա սուսերածիգք ։
26 Եւ ելին ամենայն որդիքն Իսրայելի
եւ ամենայն ժողովուրդն եւ եկին [5]ի
Բեթէլ . եւ նստան լացին առաջի Տեառն,
եւ պահեցին յաւուր [9]յայնմիկ, եւ մատուցին ողջակէզս [10]փրկութեան առաջի
27 Տեառն. Քանզի անդ էր տապանակ ուխտին [11]Տեառն Աստուծոյ յաւուրսն յայնսիկ . եւ Փենեէս որդի Եղիազարու
որդւոյ Ահարոնի կայր առաջի նորա յա-
28 ւուրսն յայնոսիկ ։ Եւ հարցին որդիքն
Իսրայելի զՏէր, եւ ասեն, Յաւելցո՞ւք
միւսանգամ ելանել ի պատերազմ ընդ
որդիսն Բենիամինի եղբօր մերում, թէ
դադարեսցուք . եւ ասէ Տէր, Ելէք, եւ
վաղիւ տաց զնա ի ձեռս ձեր ։
29 Եւ եդին որդիքն Իսրայելի դարանա-
30 կալս շուրջ զԳաբաաւ ։ Եւ ելին որդիքն
Իսրայելի ի վերայ Բենիամինի յաւուրն
երրորդի, եւ ճակատեցան զԳաբաաւ
31 որպէս միանգամ եւ միւսանգամ ։ Եւ
ելին որդիքն Բենիամինի ընդդէմ ժողովրդեանն, եւ ձգեցան ի քաղաքէ անտի,
եւ սկսան հարկանել ի ժողովրդենէ անտի
վիրաւորս, որպէս միանգամ եւ միւսանգամ, առ ճանապարհօքն որ մին
ելանէր ի Բեթէլ, եւ միւսն ելանէր ի
Գաբաա, եւ հարին յանդի անդ իբրեւ
32 արս երեսուն յԻսրայելէ ։ Եւ ասեն որդիքն Բենիամինի, Կոտորեսցին նոքա
առաջի մեր իբրեւ զառաջինն . եւ որդիքն Իսրայելի ասեն, Փախիցուք եւ
մերժեսցուք զնոսա ի քաղաքէն ի ճա-
33 նապարհս ։ Եւ ամենայն այր Իսրայելի

[1] Եբր. առնել ըստ [2] Եբր. տուք [3] Եբր. վեց
[4] Եբր. եւթն հարիւր, որոց փակեալ էր աջոյ ձեռն
[5] Կամ, ի տունն Աստուծոյ [6] Եբր. զառաջինն
[7] Եբր. ի Գաբաայ [8] Եբր. ութեւտասն [9] Եբր. յայնմիկ մինչեւ ցերեկոյ [10] Եբր. եւ խաղաղականս [11] Յեբր. պակասի

յարեւան յւրաքանչիւր ի անդւոջէ իւր-
մէ, եւ ճակատեցան ի Բաաղթամար. եւ
դարանակալքն Իսրայէլի [1]կոուէին ի
անդւոջէ իւրեանց յարեւմտից" Գաբաայ։
34 Եւ եկին հանդէպ Գաբաայ տասն հա-
զար արանց ընտրելոց յամենայն Իսրա-
յելէ. եւ ծանրացաւ պատերազմն, եւ
նոքա ոչ գիտէին թէ հասեալ են ի վե-
35 րայ նոցա չարիք։ Եւ վանեաց Տէր զԲե-
նիամին առաջի որդւոյն Իսրայելի, եւ
սատակեցին որդիքն Իսրայելի ի Բենիա-
մինէ յաւուր յայնմիկ քսան եւ հինգ հա-
զար եւ հարիւր այր, ամենեքին նոքա
36 սուսերամերկք։ [2]Իբրեւ տեսին որդիքն
Բենիամինի եթէ ի պարտութիւն մատ-
նեալ են. տեղի ետուն այր Իսրայելեան
Բենիամինի, զի յուսացեալ էին ի դա-
37 րանամուտն որ էին զԳաբաաւ։ Եւ
յարձակեցան դարանամուտքն եւ հեղան
զԳաբաաւ. եւ մտին եւ հարին զքաղաքն
38 ամենայն սրով սուսերի։ Եւ ժամադրու-
թիւն էր առն Իսրայելի ընդ դարանա-
կալսն հրով հանել նոցա զծուխ
39 քաղաքին։ Եւ [3]դարձաւ այր Իսրայելացի
ի պատերազմէն". եւ Բենիամին սկսաւ
հարկանել վիրաւորս [4]ի դարանակալացն
Իսրայելի իբրեւ արս երեսուն. զի ա-
սացին թէ վանելով վանին առաջի մեր
40 իբրեւ զպատերազմն զառաջին։ Եւ [5]նշա-
նակն ամբարձաւ յորդեալ ի վերայ քա-
ղաքին իբրեւ սիւն ծխոյ. եւ հայեցաւ
Բենիամին ի թիկունս իւր, եւ ահա ե-
41 լանէր վախճան քաղաքին յերկինս։ Եւ
այր Իսրայելացի դարձաւ անդրէն, եւ
սասանեցաւ այր Բենիամինի. զի ե-
տես հասեալ ի վերայ նոցա զչարիսն։
42 Եւ խոյս ետուն յերեսաց առն Իսրայելի
ընդ ճանապարհ անապատին, եւ պա-
տերազմն ժամանեաց նոցա. եւ որ ի
քաղաքացն ելանէին՝ սատակէին զնոսա
43 ի մէջ իւրեանց։ Եւ [6]հարին զԲենիա-
մին, եւ մտին զհետ նորա [7]ի Նուայ
մինչեւ հանդէպ Գաբաայ՝ յարեւելից
44 կողմանէ։ Եւ անկան ի Բենիամինէ
ութուտասն հազար արանց, ամենեք-
45 եան նոքա արք զօրաւորք։ Եւ տեսեալ
մնացորդացն փախեան յանապատն ա-
պառաժն ի վէմն Ռեմոնայ. եւ ճաքաղ
արարին ի նմանէ ի ճանապարհին հա-
զարս հինգ արանց. եւ պնդեցան զհետ
նոցա մինչեւ [8]զԳադաադ, եւ հարին ի
46 Բենիամինէ երկուս հազարս արանց։ Եւ
եղեն ամենայն անկեալքն ի Բենիամինէ
քսան եւ հինգ հազար արանց սուսե-
րամերկաց յաւուր յայնմիկ, ամենեքեան
47 նոքա արք զօրութեան։ Եւ խուսեալ
մնացորդացն փախեան յանապատն ա-
պառաժն ի վէմն Ռեմոնայ՝ արք վեց
հարիւր. եւ նստան ի վիմին Ռեմոնի
48 չորս ամիս։ Եւ այր Իսրայելի դարձան
[9]ընդ կրուկն որդւոցն" Բենիամինի. եւ
հարին զնոսա սրով սուսերի ի քաղաքէ
[10]կարգաւ մինչեւ ցանասունն, մինչեւ
ցամենայն [11]գտեալ յամենայն քաղաքս".
եւ զքաղաքսն ապրեալս [12]առաքեցին
եւ" այրեցին հրով։

ԳԼ. ԻԱ

1 Եւ այր Իսրայելի երդուան ի Մասփա,
եւ ասեն, Այր ոք ի մէնջ մի տացէ
զդուստր իւր Բենիամինի կնութեան։
2 Եւ եկին ամենայն ժողովուրդն [12]ի Մաս-
փա՝ [13]ի Բեթէլ, եւ նստան անդ մինչեւ
ցերեկոյ առաջի Աստուծոյ, եւ ամբար-
ձին զձայնս իւրեանց եւ լացին լալիւն
3 մեծ։ Եւ ասեն, Ընդէ՞ր, Տէր Աստուած
Իսրայելի, եղեւ այս յԻսրայէլ, բնաջինջ
4 լինել այսօր յԻսրայելէ ցեղի միոյ։ Եւ
եղեւ ի վաղիւ անդր կանխեաց ժողո-
վուրդն եւ շինեցին անդ սեղան, եւ
մատուցին ողջակէզս [14]փրկութեան։
5 Եւ ասեն որդիքն Իսրայելի, Ո՞վ է որ
ոչ ել յայս եկեղեցի յամենայն ցեղիցն
Իսրայելի առ Տէր [12]ի Մասփա. զի
երդումն մեծ էր այնմ որ ոչ [15]ելանէր ի
Մասփա եւ ասէին թէ Մահու մեռցի։
6 Եւ [16]մխիթարեցան որդիքն Իսրայելի ի
վերայ Բենիամինի եղբօր իւրեանց, եւ
ասեն, Բարձաւ այսօր ցեղ մի յԻսրա-
7 յէլէ։ Եւ արդ զի՞նչ արասցուք մնացե-
լոցն առանց կանանց, եւ մեք երդուաք
ի Տէր՝ չտալ նոցա ի դստերաց մերոց
8 կանայս։ Եւ ասեն, Ո՞ ոք մի ի ցեղիցն
Իսրայելի որ ոչ ել առ Տէր ի Մասփա.
եւ ահա չէր ոք եկեալ Յաբիսայ Գա-
9 ղաադու ի բանակ եկեղեցւոյն։ Եւ անդ

[1]Եբր. դիմեցին ի տեղւոջէ իւրեանց, ի դաշտէն [2]Եբր. Եւ [3]Եբր. խոյս ետ այր Իսրայելացի ի պատերազմին [4]Եբր. յարանց անտի [5]Եբր. Հրդեհն [6]Եբր. պատեցին [7]Եբր. Հարին զնա ուր հանգեան

[8]Եբր. ցԳեդոմ [9]Եբր. առ որդիսն [10]Եբր. ի մարդոյ [11]Եբր. գտեալս [12]Եբր. [illegible] [13]Կամ, ի տուն Աստուծոյ [14]Եբր. եւ խաղաղականս [16]Եբր. ելանէր առ Տէր [16]Եբր. ստրջացան

ի հանդիսի ժողովուրդն, եւ ոչ գոյր անդ
10 այր ի տանէ Յաբիսայ Գաղաադու։ Եւ
առաքեցին անդր ժողովուրդն երկոտա-
սան հազար արանց յորդւոցն զօրու-
թեան, եւ պատուիրեցին նոցա եւ ա-
սեն, Երթայք եւ հարէք զբնակիչս Յա-
բիսայ Գաղաադու սրով սուսերի, եւ
11 զկանայս եւ [1]զժողովուրդ։ Եւ այս բան
է զոր առնիցէք. զամենայն արու եւ
զամենայն կին որ գիտիցէ զանկողինս
12 արուի, նզովեսջիք։ Եւ գտին ի տանէ
Յաբիսայ Գաղաադու չորեքհարեւր աղ-
ջիկ կոյս որ ոչ գիտէին զայր յանկողինս
արուի. եւ ածին զնոսա ի բանակն ի
13 Սելով, որ է յերկրին Քանանու։ Եւ ա-
ռաքեաց ամենայն ժողովուրդն եւ խօսե-
ցան ընդ որդւոցն Բենիամինի որ էին ի
վիմին Ռեմոնայ, եւ կոչեցին զնոսա ի
14 խաղաղութիւն։ Եւ դարձաւ Բենիամին
ի ժամանակին յայնմիկ [2]առ որդիսն Իս-
րայելի". եւ ետուն նոցա կանայս զայ-
նոսիկ որ էին ի կանանցն Յաբիսայ Գա-
ղաադու. եւ [3]հաճոյ թուեցաւ նոցա այն-
15 պէս"։ Եւ ժողովուրդն [4]մխիթարեցաւ
ի վերայ Բենիամինի. զի արար Տէր
խրամատութիւն ի մէջ ցեղիցն Իսրայելի։
16 Եւ ասեն ծերք ժողովրդեանն, Զի՞նչ
արասցուք եւ վասն այլոց անկանանցն.
17 զի սատակեցաւ կին ի Բենիամինէ։ Եւ
ասեն, Ժառանգութիւն զերծեալ է ի
Բենիամինէ, եւ մի՛ ջնջեսցի ցեղն յԻս-
18 րայելէ. Եւ մեք ոչ կարեմք տալ նոցա
կանայս ի դստերաց մերոց, զի երդուաք
որդիք Իսրայելի եւ ասեմք թէ Անիծ-
19 եալ լիցի որ տացէ կին Բենիամինի։ Եւ
ասեն, Ահա տօն Տեառն է ի Սելով
աւուրց յաւուրս, որ է ի հիւսիսոյ Բե-
թելայ, ընդ արեւելս ճանապարհին որ
հանէ ի Բեթելայ ի Սիկիմ, եւ ի հարա-
20 ւոյ [2]Լիբանանու յԼեբոնայ։ Եւ պատ-
ուիրեցին որդւոյն Բենիամինի եւ ասեն,
Երթայք եւ դարանամուտ լերուք յայ-
21 գեստանին։ Եւ յորժամ տեսանիցէք թէ
ելանեն դստերք բնակչացն Սելովայ պար
առնուլ պարուք, ելջիք յայգեստանեացն,
եւ յափշտակեսջիք այր իւրաքանչիւր
կին ի դստերաց Սելովայ, եւ երթիջիք
22 յերկիրն Բենիամինի։ Եւ եղիցի յորժամ
գայցեն հարքն նոցա կամ եղբարք նոցա
[5]դատել ընդ ձեզ", ասասցուք նոցա թէ
[6]Ողորմեցարուք նոցա. զի ոչ" առ այր զկին
իւր ի պատերազմին, եւ ոչ դուք ետուք
23 նոցա թէ յանցանք ինչ լիցին։ Եւ արա-
րին այնպէս որդիքն Բենիամինի, եւ ա-
ռին կանայս ըստ թուոյ իւրեանց ի պա-
րուորացն զորս յափշտակեցին. եւ գնա-
ցին եւ դարձան յիւրաքանչիւր ժառան-
գութիւնս իւրեանց, եւ շինեցին քա-
24 ղաքս եւ բնակեցին ի նոսա։ Եւ գնա-
ցին որդիքն Իսրայելի ի ժամանակին
յայնմիկ այր յիւրաքանչիւր ցեղ իւր եւ
յազգատոհմ իւր, եւ ելին անտի այր
25 յիւրաքանչիւր ժառանգութիւն իւր։ Յա-
ւուրսն յայնոսիկ ոչ գոյր թագաւոր Իս-
րայելի, եւ այր իւրաքանչիւր զհաճոյս
աչաց իւրոց առնէր։

[1] Եբր. զմանկտի [2] Յեբր. պակասէ [3] Եբր. չեղեւ նոցա բաւական [4] Եբր. զղջացաւ

[5] Եբր. ի դատաստան առ մեզ [6] Եբր. Շնորհեցէք մեզ զնոսա. զի ոչ պահեցաք

# ՀՌՈՒԹ

## ԳԼՈՒԽ Ա

1 Եւ եղեւ յաւուրս դատելոյ դատաւ-
ւորացն եկն սով յերկիրն. եւ գնաց
այր ի Բեթղեհեմէ Յուդայ պանդխտա-
նալ [1]յագարակին Մովաբայ, ինքն եւ
2 կին իւր եւ երկու որդիք իւր։ Եւ ա-
նուն առնն Եղիմելէք, եւ անուն կնոջ
նորա Նոոմին, եւ անուն երկուց որդ-
ւոց նորա Մաալոն եւ Քելլոն, Եփրա-
թացիք ի Բեթղեհեմէ Յուդայ. չոգան
3 [2]յագարակն Մովաբու, եւ անդ էին։ Եւ
մեռաւ Եղիմելէք այրն Նոոմեայ, եւ
4 մնաց կինն եւ երկու որդիք նորա։ Եւ
առին իւրեանց կանայս Մովաբացիս.
անուն միումն Որփա, եւ անուն երկ-
րորդին Հռութ. եւ բնակեցին անդ իբ-
5 րեւ ամս տասն։ Եւ մեռան անդ՝ երկո-
քին, Մաալոն եւ Քելլոն, եւ մնաց կինն
միայն յառնէ իւրմէ եւ յորդւոց իւրոց։
6 Եւ յարեաւ ինքն եւ երկոքին նուանք
նորա, եւ դարձան [3]յագարակէն Մովա-
բայ. զի [4]լուան եթէ այց արար Ա-
ստուած՚՚ ժողովրդեան իւրում տալ նոցա
7 հաց։ Եւ ել ի տեղւոջէն ուր էր, եւ
երկոքին նուանք նորա ընդ նմա, եւ
գնային ճանապարհ՝ դառնալ յերկիրն
8 Յուդայ։ Եւ ասէ Նոոմին ցերկոսին
նուանս իւր, Երթայք դարձարուք յիւրա-
քանչիւր տուն [5]հօր իւրոյ. եւ արասցէ
ընդ ձեզ Տէր ողորմութիւն, որպէս ա-
9 րարէք ընդ մեռեալսն եւ ընդ իս։ Տացէ
ձեզ Տէր եւ գտջիք հանգիստ իւրա-
քանչիւր ի տան առն իւրոյ. եւ համ-
բուրեաց զնոսա. ամբարձին զձայնս իւր-
10 եանց եւ լացին։ Եւ ասեն ցնա, Ոչ այդ-
պէս, այլ ընդ քեզ դարձցուք ի ժողո-
11 վուրդ քո։ Եւ ասէ Նոոմին, Դարձա-
րուք, դստերք իմ. ընդէ՞ր գայցէք ընդ
իս. միթէ դարձեալ որդի՞ք իցեն յորո-
վայնի իմում, եւ լինիցին ձեզ յա՞րս։
12 Դարձարուք, դստերք իմ, եւ երթայք,
զի ես ծերացեալ եմ, եւ չեմ լինելոյ
առն. եթէ ասիցեմ՝ եթէ կայցէ ինչ ինձ
ակն, եւ լինիցիմ առն [6]աշխարհակա-
13 նացեալ, եւ ծնանիցիմ որդիս, Եւ նոցա
սպասիցէ՞ք մինչեւ զարգանայցեն, եւ ի
նոսա գրաւիցի՞ք չլինել առն. մի, դստերք
իմ. զի առաւել քան զձեզ դառնացեալ
14 եմ, զի ել ընդ իս ձեռն Տեառն։ Եւ
ամբարձին զձայնս իւրեանց միւսանգամ,
եւ լացին. եւ համբուրեաց Որփա զսկե-
սուր իւր, [7]եւ դարձաւ ի ժողովուրդ
15 իւր.՚՚ բայց Հռութ գնաց զկնի նորա։ Եւ
ասէ Նոոմին ցՀռութ, Ահա նէր քո դար-
ձաւ ի ժողովուրդ իւր եւ առ աստուածս
իւր, դարձիր եւ դու զհետ նրբին քո։
16 Եւ ասէ Հռութ, Մի՛ [8]պատահեսցէ ինձ՚՚
թողուլ զքեզ եւ դառնալ ի քէն. զի ուր
դու երթայցես՝ երթայց, եւ ուր հանգ-
չիցիս՝ հանգեայց. ժողովուրդ քո՝ ժողո-
վուրդ իմ, եւ Աստուած քո՝ Աստուած
17 իմ. Եւ ուր մեռանիցիս՝ մեռայց, եւ
անդ թաղեցայց. օն եւ օն արասցէ ինձ
Տէր եւ օն եւ օն յաւելցէ, բայց եթէ
18 մահ մեկնեսցէ ընդ իս եւ ընդ քեզ։ Եւ
իբրեւ ետես Նոոմին եթէ պնդեալ է
երթալ նա ընդ նմա, դադարեաց այ-
նուհետեւ ի խօսելոյ ընդ նմա։
19 Եւ գնացին երկոքին մինչեւ գալ նոցա
ի Բեթղեհեմ. եւ եղեւ ի գալն նոցա ի
Բեթղեհեմ, հնչեաց ամենայն քաղաքն
[9]զնովաւ, եւ ասեն թէ Սա՞ իցէ Նոոմին։
20 Եւ ասէ ցնոսա, Մի՛ կոչէք զիս [10]Նոոմին,
այլ կոչեցէք զիս Դառնացեալ, զի դառ-
21 նացոյց զիս Բաւականն յոյժ. Լի չոգայ,
եւ ունայն դարձոյց զիս Տէր. եւ արդ՝
ընդէ՞ր կոչէք զիս Նոոմին, եւ Տէր նկուն
արար զիս, եւ Բաւականն չարչարեաց
22 զիս։ Եւ դարձան Նոոմին եւ Հռութ
Մովաբացի նու իւր ընդ նմա՝ գնացեալ
[3]յագարակէն Մովաբայ, եւ եկին ի Բեթ-
ղեհեմ ի սկզբան հնձոց գարւոյ։

[1]Կամ, յերկրին [2]Կամ, յերկիրն [3]Կամ, յերկրէն
[4]Եբր. լուաւ յերկրին Մովաբու եթէ այց արար Տէր [5]Եբր. մօր

[6]Եբր. յայսմ գիշերի [7]Եբր. պակասի [8]Եբր. բռնադատեր զիս [9]Եբր. զնոցանէ [10]Նշանակի Հաճեցեալ

ԳԼ. Բ

1 Եւ անդ էր այր ծանօթ առն Նոեմի-
նայ, եւ այրն հզօր զօրութեամբ, յազ-
գէն Եղիմելիքայ, եւ անուն նորա Բոոս.
[1]եւ ետ Նոեմինայ տուն այրութեան
2 բնակելոյ ի նմա։" Եւ ասէ Հռութ Մո-
վաբացի ցՆոեմին, Երթայց յանդ եւ քա-
ղեցից հասկ զհետ ուրուք, որոյ գտից
շնորհս առաջի աչաց նորա. եւ ասէ ցնա,
3 Երթ, դուստր։ Եւ գնաց. եւ երթեալ
քաղէր հասկ յանդի զհետ հնձողացն, եւ
դիպելով դիպեցաւ վիճակի անդին Բոո-
սայ, ազգականի Եղիմելիքայ։
4 Եւ ահա Բոոս եկն ի Բեթղեհեմէ,
եւ ասէ ցհնձողս իւր, Տէր ընդ ձեզ.
եւ նոքա ասեն ցնա, Օրհնեսցէ զքեզ Տէր։
5 Եւ ասէ Բոոս ցպատանին իւր որ կայր
ի վերայ հնձողացն, Ո՞յր է աղջիկդ այդ։
6 Պատասխանի ետ պատանին որ կայր ի
վերայ հնձողացն եւ ասէ, Մովաբացի
աղջիկն է որ դարձաւ ընդ Նոեմինայ
7 [2]յագարակէն Մովաբու։ Եւ ասէ, Թող
քաղեցից եւ ժողովեցից հասկ ի մէջ
որայոց զհետ հնձողացդ. եւ եկն եկաց
յառաւօտէ մինչեւ ցայժմ, [3]եւ ոչ դա-
դարեաց եւ ոչ սակաւիկ ինչ յանդիս"։
8 Եւ ասէ Բոոս ցՀռութ, Լուա՞ր, դուստր.
մի՛ այլ ուրեք երթիցես քաղել հասկ
յայլոց անդի, եւ մի՛ բնաւ ուրեք գնաս-
ցես աստի. այլ աստէն կաց յարեաց յաղ-
9 ջկունս իմ։ Եւ աչք քո յանդիս ուր եւ
հնձեսցեն, եւ երթիցես զհետ նոցա. ո՞չ
ապաքէն պատուէր ետու մանկտւոյ ի-
մում չմերձենալ ի քեզ. եւ եթէ ծարա-
ւեսցես, երթիցես յամանսն եւ արբցես
10 ուստի հանիցեն ջուր մանկտիք։ Եւ անկ-
եալ ի վերայ երեսաց իւրոց երկիր եպագ
յերկիր ի խոնարհ, եւ ասէ, Զի՞ է զի
գտի շնորհս առաջի աչաց քոց ծանաչել
11 զիս, եւ ես եմ կին մի օտար։ Պատաս-
խանի ետ Բոոս եւ ասէ ցնա, Պատմելով
պատմեցաւ ինձ ամենայն ինչ զոր արարեր
սկեսրի քում յետ մահուան առն քում,
եւ զիարդ թողեր զհայր քո եւ զմայր,
եւ զերկիր ծննդեան քո, եւ եկիր ի
ժողովուրդ զոր ոչ գիտէիր յերէկ եւ յե-
12 ռանդ։ Հատուսցէ քեզ Տէր ըստ վաս-
տակոց քոց, եւ եղիցի լի վարձք քո ի
Տեառնէ Աստուծոյ Իսրայելի, յոր դիմե-

[1] Յեբր. գոխաւէ  [2] Կամ, յերկրէն  [3] Յեբր. Նստաւ միայն սակաւիկ մի ի տան

ցերն ապաստան լինել ընդ թեւօք նորա։
13 Եւ նա ասէ, Գտի շնորհս առաջի աչաց
քոց, տէր. զի մխիթարեցեր զիս, եւ
զի խօսեցար ի սիրտ աղախնոյ քո. եւ
ես [4]եղէց իբրեւ զմի յաղախնաց քոց։
14 Եւ ասէ ցնա [5]Բոոս, Ահա ժամ հացոյ
է, մատիր" այսր եւ կեր ի հացէդ, եւ
թացցես զպատառ քո ի քացախիդ. եւ
նստաւ Հռութ ի կողմանէ հնձողացն,
եւ խառնեաց նմա Բոոս փոխինդ. եւ
եկեր եւ յագեցաւ, եւ եթող նշխար։
15 Եւ յարեաւ քաղել հասկ, եւ պատուիր-
եաց Բոոս մանկտւոյ իւրում, եւ ասէ,
Այլ եւ ի մէջ որայոցն քաղեսցէ, եւ մի՛
16 պատկառեցուցանէք զնա. Այլ եւ [1]բառնա-
լով բարձուսջիք, եւ" արկանելով արկ-
ջիք առաջի նորա [6]ի փախնգոցն խառ-
նելոց", եւ թող տաջիք նմա եւ [1]կերի-
ցէ՝ եւ" քաղեսցէ հասկ. եւ մի՛ ինչ զզու-
17 կիցէք զնա։ Եւ քաղեաց յանդին մինչեւ
ցերեկոյ. եւ ծեծեաց զոր քաղեացն, եւ
18 եղեւ արդու մի գարւոյ։ Եւ առ եւ ե-
մուտ ի քաղաքն. իբրեւ ետես սկեսուրն
նորա զոր քաղեացն, եւ եհան Հռութ
ետ նմա ի նշխարէն յորոյ յագեցաւն։
19 Ասէ ցնա սկեսուրն իւր, Ո՞ւր ժողո-
վեցեր այսօր, եւ կամ ո՞ւր եղեր. եղիցի
որ ծանեաւն զքեզ՝ օրհնեալ. եւ պատ-
մեաց Հռութ սկեսրին իւրոյ թէ ուր ե-
ղեւ, եւ ասաց զանուն առնն առ որում
20 եղեւ այն օր թէ Բոոս է։ Ասէ Նոեմին
ցնու իւր, Օրհնեալ է նա ի Տեառնէ,
զի ոչ պակասեցոյց զգութ իւր ի կեն-
դանեաց եւ ի մեռելոց. եւ ասէ ցնա
Նոեմին, Մերձ է այրն ի մեզ, ի մերձա-
21 ւորաց մերոց է։ Եւ ասէ Հռութ ցսկե-
սուրն իւր, [7]Իրու է, ասաց ցիս թէ
Յաղջկունսդ" իմ յարեաց, մինչեւ վախ-
ճանեսցեն զհունձսդ՝ որչափ իցեն իմ։
22 Եւ ասէ Նոեմին ցՀռութ նու իւր, Բարի
է դուստր, զի եղեր ընդ աղջկունս նո-
րա, եւ մի՛ պատահիցէ ոք քեզ յայլում
23 անդի։ Եւ յարեցաւ Հռութ յաղջկունսն
Բոոսայ քաղել հասկ մինչեւ վախճանել
հնձոցն գարեաց եւ հնձոց ցորենոյ. եւ
նստաւ առ սկեսրի իւրում։

ԳԼ. Գ

1 Եւ ասէ ցնա Նոեմին սկեսուր իւր.
Դուստր, [8]խնդրեցից քեզ հանգիստ, զի

[4] Եբր. չեմ  [5] Եբր. Բոոս ի ժամ ճաշոյն, Մատիր
[6] Եբր. յորայոցն  [7] Եբր. Ասաց եւս թէ Ի մանկտին
[8] Եբր. ո՞չ խնդրեցից

2 բարի լինիցի քեզ։ Եւ արդ ո՞չ ապաքէն
Բոոս ծանօթ մեր է, որոյ էիր ընդ աղ-
ջկունս նորա. ահաւասիկ նա արկանէ
3 կալ ի գարւոյ ի գիշերիս յայսմիկ։ Եւ
դու լուասջիր եւ օծջիր, եւ արկջիր
զհանդերձ քո զքեւ եւ էջցես ի կալն,
եւ մի՛ տացես առնն ծանօթս մինչեւ
վախճանեսցէ զուտել եւ զըմպել իւր։
4 Եւ եղիցի ի մտանելն նորա ի քուն,
նշմարեսջիր զտեղին ուր ննջիցէ. եւ
երթիցես եւ բացցես յոտից կողմանէ, եւ
ննջիցես. եւ նա պատմեսցէ քեզ զինչ
5 առնելոց իցես։ Եւ ասէ ցնա Հռութ,
Զամենայն զոր ինչ ասասցես ցիս՝ արարից։
6 Էջ ի կալն, եւ արար ըստ ամենայնի
որպէս պատուիրեաց նմա սկեսուրն իւր։
7 Եկեր Բոոս եւ արբ. եւ զուարթացաւ
սիրտ նորա, եւ չոգաւ ննջեաց առ եզերբ
զաղչին. եւ նա եկն գաղտ, եւ մերկա-
8 ցոյց յոտից կողմանէ եւ ննջեաց։ Եւ
եղեւ զհասարակածու գիշերոյն, զար-
հուրեցաւ այրն եւ խռովեցաւ. եւ ահա
9 կին ննջէր առ ոտիւք նորա։ Եւ ասէ,
Ո՞վ ես դու. եւ ասէ, Ես եմ Հռութ
աղախին քո, եւ արկջես դու զգրօշակ
քո զաղախնաւ քով. զի մերձաւորիչ ես
10 դու։ Եւ ասէ Բոոս, Օրհնեալ ես դու ի
Տեառնէ [1]Աստուծոյ, դուստր, զի աղ-
նուացուցեր դու զգութ քո զվերջինս
քան զառաջինն. զի ոչ չոգար զհետ ե-
րիտասարդաց աղքատաց կամ զմեծա-
11 մեծաց։ Եւ արդ, դուստր, մի՛ երկնչիր.
զամենայն զոր ինչ ասասցես ցիս ա-
րարից քեզ. քանզի գիտէ ամենայն ցեղ
ժողովրդեան իմոյ եթէ կին զօրութեան
12 ես դու։ Եւ արդարեւ եմ ես մերձաւո-
րիչ քո. բայց գոյ եւ այլ եւս մօտ մեր-
13 ձաւորիչ՝ մօտաւորն քան զիս։ Ագիր
աստ զգիշերս զայս. եւ եղիցի այգուն,
եթէ մերձաւորեսցուսցէ զքեզ մերձա-
ւորիչն, բարի է. ապա եթէ ոչ կամիցի
մերձաւորեցուցանել զքեզ, ես մերձա-
ւորեցուցից զքեզ, կենդանի է Տէր.
ննջեա այդր մինչեւ ցառաւօտ։
14 Եւ ննջեաց առ ոտս նորա մինչեւ ցա-
ռաւօտն. եւ յարեաւ կինն մինչչեւ ճա-
նաչէր այր զընկեր իւր. եւ ասէ Բոոս,
Մի՛ ոք գիտասցէ թէ կին ոք եկն [1]առ
15 իս" ի կալս. Բեր զմեկնոցդ որ ի վերայ
քո է, եւ կալ ասա. եւ նա կալաւ. եւ
չափեաց վեց չափո՛յն գարի, եւ եդ ի

[13] Եբր. պոյտուէ

16 վերայ նորա, եւ եմուտ ի քաղաքն։ Եւ
չոգաւ Հռութ առ սկեսուրն իւր. եւ
նա ասէ, Զի՞ է դուստր. եւ պատմեաց
նմա զամենայն ինչ զոր արար նմա այրն։
17 Եւ ասէ ցնա, Զայս վեց չափ գարւոյ
ետ ինձ եւ ասէ, Զի մի՛ մտցես ունայ-
18 նաձեռն առ սկեսուրն քո։ Եւ նա ասէ,
[2]Նիստ դու" մինչեւ յայտ լիցի մեզ. որ-
պէս զի ոչ վրիպէ բանն, զի ոչ դադարէ
այրն թէ ոչ կատարէ սոյն օրին զբանն։

ԳԼ. Դ

1 Եւ Բոոս ել ի դուռնն եւ նստաւ անդ.
եւ ահա անցանէր առ նովաւ մերձաւո-
րիչն զորմէ խօսեցաւ Բոոս. եւ ասէ
ցնա Բոոս, Անց նիստ աստ [3]վայր մի եւ
2 մեա". եւ նա անց նստաւ։ Եւ առ Բոոս
տասն այր ի ծերոց քաղաքին եւ ասէ,
3 Նստարուք աստ, եւ նստան։ Եւ ասէ
Բոոս ցմերձաւորիչն, Զբաժին անդոյ որ
է եղբօր մերոյ Եղիմելիքայ՝ վաճառէ
Նոեմին, որ դարձեալն է [4]յագարակէն
4 Մովաբայ։ Եւ ես ասացի թէ յայտնեցից
յունկն քո. արդ ստասջիր առաջի սոցա
որ նստին, եւ առաջի ծերոց ժողո-
վրդեան իմոյ. արդ եթէ մերձաւորե-
ցուցանես՝ մերձաւորեցո՛. ապա թէ ոչ
մերձաւորեցուցանես, պատմեա ինձ եւ
գիտացից. զի ոչ գոյ բաց ի քէն մերձա-
ւորարար, եւ յետ քո ես եմ մերձաւո-
5 րիչ։ [5]Եւ ասէ Բոոս, Յաւուր ստանա-
լոյ քո զագարակն ի ձեռաց Նոեմեայ,
եւ ի Հռութայ Մովաբացւոյ ի կնոջէ
մեռելոյն, եւ զնա պարտիս ստանալ եւ
յարուցանել զանուն մեռելոյն ի ժառան-
6 գութեան իւրում։ Եւ ասէ մերձաւո-
րիչն ցԲոոս, Ոչ կարեմ մերձաւորեցու-
ցանել ես ինձ, գուցէ եղծանիցեմ զժա-
ռանգութիւն իմ. մերձաւորեա դու քեզ
զմերձաւորութիւն իմ, զի ես ոչ կարեմ
7 մերձաւորեցուցանել։ Եւ այս օրէն էր
յառաջագոյն ի մէջ Իսրայէլի վասն մեր-
ձաւորութեան, եւ վասն գնելոյ առ ի
հաստատելոյ զամենայն բան. բոկանայր
այր զկօշիկ իւր, եւ տայր ցընկեր իւր՝
[1]որ մերձաւորելոց էր զմերձաւորութիւն
նորա." եւ այն լինէր ի վկայութիւն ի
8 մէջ Իսրայէլի։ Եւ ասէ մերձաւորիչն
ցԲոոս, Ստացիր դու քեզ [1]զմերձաւո-

[2] Եբր. Նիստ, դուստր, [3] Եբր. ա՛յր դու, [4] Կամ, յերկրէն [5] Եբրայեցին յաւելու, եւ նա ասէ, Մերձաւորեցուցից։

ռութիւն իմ". եւ բոկացաւ զկօշիկ իւր
[1]եւ ետ նմա":
9 Եւ ասէ Բոոս ցծերսն եւ ցամենայն
ժողովուրդն, Վկայք իմ էք դուք այսօր,
զի ստացայ զամենայն ինչս Եղիմելեքայ,
եւ զամենայն ինչ որ է Քելլոնայ եւ
10 Մաալոնայ ի ձեռաց Նոեմինայ: Նա եւ
զՀռութ Մովաբացի զկին Մաալոնայ
ստացայ ինձ կնութեան, կանգնել զա-
նուն մեռելոյն ի ժառանգութեան իւ-
րում. եւ մի՛ ջնջեսցի անուն մեռելոյն
յեղբարց իւրոց եւ [2]ի ցեղէ անդւոյ իւ-
11 րոյ. եւ վկայք դուք էք այսօր: Պա-
տասխանի ետ ամենայն ժողովուրդն ի
դրանն եւ [3]ասեն, Մեք եմք վկայք. եւ
ծերքն ասեն." Տացէ Տէր զկինն որ
մտանէ ի տուն քո իբրեւ զՀռաքէլ եւ
իբրեւ զԼիա, որ շինեցին երկոքին զտունն
Իսրայելի, առնել զօրութիւն յԵփրաթա,
12 եւ կոչել անուն ի Բեթղեհէմ: Եւ եղիցի
տուն քո իբրեւ զտունն Փարեսի, զոր
ծնաւ Թամար Յուդայի, յայնմ զաւակէ,
[4]եւ տացէ քեզ Տէր [1]որդի [5]յաղջկանէդ
յայդմանէ:
13 Եւ առ Բոոս զՀռութ, եւ եղեւ նմա
ի կնութեան. եւ եմուտ առ նա, եւ
ետ նմա Տէր յղութիւն, եւ ծնաւ որդի:
14 Եւ ասեն կանայքն ցՆոեմին, Օրհնեալ
Տէր, որ ոչ պակասեաց ի քէն այսօր զմեր-
ձաւորիչն, անուանել զանուն [6]քո ի մէջ
15 Իսրայելի. Եւ եղիցի քեզ ի դարձուցա-
նել զոգի եւ կերակրել զծերութիւն քո.
զի նու քո որ սիրեաց զքեզ՝ ծնաւ որդի
16 որ լաւ է քեզ քան զեւթն որդի: Եւ
առ Նոեմին զմանուկն եւ եդ ի ծոց իւ-
17 րում. եւ եղեւ նմա դայեակ: Եւ կոչեցին
անուն նմա դրացիքն եւ ասեն, Ծնաւ
որդի Նոեմինայ, եւ կոչեցին զանուն նորա
Ովբէդ. նա է հայր Յեսսեայ հօր Դաւթի:
18 Եւ այս են ծնունդք Փարեսի. Փարէս
19 ծնաւ զԵսրովմ, Եւ Եսրովմ ծնաւ զԱրամ,
20 Արամ ծնաւ զԱմինադաբ, Ամինադաբ
ծնաւ զՆաասոն, Նաասոն ծնաւ
21 զՍաղմոն, Սաղմոն ծնաւ զԲոոս, Բոոս
22 ծնաւ զՈվբէթ, Ովբէթ ծնաւ զՅեսսէ,
Յեսսէ ծնաւ զԴաւիթ:

[1] Եբր. չ-կայ [2] Եբր. ի դրանէ [3] Եբր. ծերքն եւ ասեն, Մեք եմք վկայք

[4] Եբր. զոր [5] Կամ, ի մանկամարդայդ [6] Եբր. նորա

# ԳԼՈՒԽՔ ԱՌԱՋԻՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

# ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

## ԱՌԱՋԻՆ

### ԳԼՈՒԽ Ա

Եւ այր մի էր յԱրիմաթեմայ, ի
1 Սիբայ՝ ի լեռնէ Եփրեմի, եւ անուն
նորա Եղկանա, որդի Յերեմիելի, որդ-
ւոյ Հեղեայ, որդւոյ Թովկեայ, [1]ի Նասիբ
2 Եփրեմի"։ Եւ էին նորա երկու կանայք.
անուն միումն Աննա, եւ անուն երկ-
րորդին՝ Փեննանա. եւ էին Փեննանայի
3 որդիք եւ Աննայի ոչ գոյր որդի։ Եւ
ելանէր այրն աւուրց յաւուրս ի քա-
ղաքէ իւրմէ [2]յԱրիմաթեմայ՝ երկիր պա-
գանել, եւ զոհել Տեառն [2]Աստուծոյ
զօրութեանց ի Սելովլ. եւ անդ [2]Հեղի
եւ" երկու որդիք [3]նորա Ոփնի եւ Փե-
4 նեէս՝ քահանայք Տեառն։ Եւ եղեւ օր
մի եւ զոհեաց Եղկանա, եւ ետ Փեննա-
նայի կնոջ իւրում եւ ուստերաց նորա
5 եւ դստերաց նորա մասունս. Եւ Ան-
նայի ետ մասն [4]մի զի ոչ գոյր նորա
որդի. բայց զԱննա սիրէր Եղկանա ա-
ռաւել քան զՓեննանա, եւ" Տէր փակ-
6 եաց զարգանդ նորա. [5]Զի ոչ ետ նմա
որդի՝ ըստ նեղութեան իւրում եւ ըստ
տրտմութեան անձին իւրոյ. եւ տրտմեալ
էր վասն այնորիկ". զի փակեաց Տէր
զարգանդ նորա [2]առ ի չտալոյ նմա որդի"։
7 Եւ այնպէս առնէր ամի ամի յելանել
նորա ի տուն Տեառն. եւ տրտմէր եւ
8 լայր եւ ոչ ուտէր։ Եւ ասէ ցնա Եղ-
կանա այր իւր, [6]Աննա. եւ ասէ ցնա,
Աւասիկ եմ, տէր։ Եւ ասէ ցնա, Զի՞ է
քեզ զի" լաս, եւ ընդէ՞ր ոչ ուտես, եւ
ընդէ՞ր հարկանէ զքեզ սիրտ քո. ո՞չ լաւ
եմ ես քեզ քան զտասն որդի։
9 Եւ յարեաւ Աննա յետ ուտելոյ[7] նորա
ի Սելովլ, եւ եկաց առաջի Տեառն." եւ
Հեղի քահանայ նստէր աթոռով առ
10 սեամս տաճարին Տեառն։ Եւ նա ցաւա-
գին անձամբ եկաց յաղօթս առ Տէր,
11 եւ ելաց լալով [8]եւ ասէ, Ադոնայ Տէր",
Էլովէ Սաբաւովթ, եթէ հայելով հա-
յեսցիս ի տառապանս աղախնոյ քո, եւ
յիշեսցես զիս[9], եւ տացես աղախնոյ քում
զաւակ արու, տաց զնա [10]նուէր առաջի
քո մինչեւ ցօր մահուան իւրոյ. եւ գինի
եւ արբեցութիւն մի՛ արբցէ, եւ" երկաթ
12 մի՛ ելցէ ի գլուխ նորա։ Եւ եղեւ իբրեւ
յաճախեաց կալ յաղօթս առաջի Տեառն,
եւ Հեղի քահանայ միտ դնէր բերանոյ
13 նորա։ Եւ նա խօսէր ի սրտի իւրում,
եւ շրթունք իւր շարժէին, եւ բարբառ
իւր ոչ լինէր լսելի. [2]եւ լուաւ նմա Տէր."
14 եւ համարեցաւ զնա Հեղի արբեալ. Եւ
ասէ ցնա [11]պատանեակն Հեղեայ", Մին-
չեւ յե՞րբ կայցես յարբեցութեան, թափ-
եա ի քէն զգինիդ քո, [2]եւ գնա յերե-
15 սաց Տեառն." Եւ պատասխանի ետ Աննա
եւ ասէ, Ոչ այդպէս, տէր. այլ կին
վշտագնեալ եմ ես ոգւով, եւ զգինի եւ
արբեցութիւն ոչ է իմ արբեալ. եւ հե-
16 ղում զանձն իմ առաջի Տեառն։ Մի՛
համարիր զաղախին քո դուստր ժանտ,
զի ի բազում տրտմութենէ եւ ի տխրու-
թենէ իմմէ վարանեալ կամ մինչեւ ցայժմ։
17 Ետ նմա պատասխանի Հեղի եւ ասէ,
Երթ ի խաղաղութիւն, եւ Աստուած Իս-
րայէլի տացէ քեզ զամենայն խնդրուածս
18 քո զոր խնդրեցեր ի նմանէ։ Եւ ասէ
Աննա, [12]Եգիտ աղախին քո շնորհս ա-
ռաջի քո. եւ գնաց կինն զճանապարհս
իւր, [13]եւ եմուտ ի վանս իւր, եւ կե-
րաւ ընդ առն իւրում եւ խօսեցաւ",
եւ երեսք իւր այլ ոչ եւս տխրեցան։
19 Եւ կանխեցին ընդ առաւօտն, երկիր

[1]Եբր. որդւոյ Սուփայ Եփրաթացւոյ [2]Յեբր. պակասէ [3]Եբր. Հեղեայ [4]Եբր. մի կրկին, զի զԱննա սիրէր, եւ [5]Եբր. Եւ գրգռէր զնա նեղիչ նորա ի բարկութիւն զայրացուցանել զնա [6]Եբր. Աննա, զի՞ [7]Եբր. եւ յետ ըմպելոյ, ի Սելովլ

[8]Եբր. Եւ ուխտեաց ուխտ եւ ասէ. [9]Եբր.-յիշեսցես յաւելու-, եւ ոչ մոռասցիս զաղախին քո [10]Եբր. Տեառն զամենայն աւուրս կենաց իւրոց. եւ [11]Եբր. Հեղի [12]Եբր. գտցէ [13]Եբր. եւ կերաւ

պաշտեցին Տեառն, եւ [1]գնացին զճանա-
պարհս իւրեանց. եւ եմուտ Եղկանա ի
տուն իւր յԱրիմաթեմ, եւ մերձեցաւ առ
Աննա կին իւր՝, եւ յիշեաց զնա Տէր։
20 Եւ յղացաւ, եւ եղեւ ի ժամանակի ա-
ւուրցն ծնաւ որդի, եւ կոչեաց զա-
նուն նորա Սամուէլ, ասէ, Զի ի Տեառնէ
[2]Աստուծոյ զօրութեանց՝ խնդրեցի զսա։
21 Եւ ել այրն Եղկանա եւ ամենայն տուն
նորա զոհել [3]ի Սելով զզոհ աւուրցն.
եւ զուխտս իւր [2]եւ զամենայն տասա-
22 նորդս իւր տարաւ՝։ Եւ Աննա ոչ ել ընդ
նմա. զի ասաց ցայր իւր, Թէ Մինչեւ
[4]ելցէ անդր մանուկս յորժամ հատուցից
զսա ի ստենէ՝, եւ յանդիման լիցի ա-
ռաջի Տեառն, եւ նստցի անդ մինչեւ
23 յաւիտեան։ Եւ ասէ ցնա Եղկանա այր
իւր, Արա որ ինչ բարի թուի առաջի
աչաց քոց. նիստ աստէն մինչեւ հա-
տուցես զդա ի ստենէ. եւ Տէր հաս-
տատեսցէ [5]որ ինչ ել ի բերանոյ քումմէ՝։
Եւ նստաւ կինն եւ սնոյց զորդին իւր՝
մինչեւ հատոյց զնա ի ստենէ։
24 Եւ [6]ել ընդ նմա ի Սելով երեմենեաւ
զուարակաւ, եւ պանիւք՝ եւ արդուաւ
նաշհոյ եւ սափորով գինւոյ. եւ [7]մտին
ի տուն Տեառն ի Սելով, եւ մանուկն
ընդ նոսա, եւ մատուցին առաջի Տեառն.
25 Եւ սպան հայրն նորա զզոհն՝ զոր առնէր
աւուրց յաւուրս Տեառն։ Եւ մատոյց
զմանուկն, եւ սպան զզուարակն վասն
փրկութեան մանկանն։ Եւ մատոյց Աննա
մայր մանկանն՝ զմանուկն առ Հեղի։
26 Եւ ասէ, Յիս տէր իմ, կենդանի է անձն
քո, ես այն կին եմ՝ որ կայի առաջի
քո ընդ քեզ՝ կալ յաղօթս առ Տէր
27 վասն մանկանս [8]այսորիկ. եւ՝ ետ Տէր
զխնդրուածս իմ, զոր խնդրեցի ի նմանէ։
28 Եւ տամ զդա փոխ Տեառն զամենայն ա-
ւուրս որչափ եւ կեցցէ. եւ եղիցի դա փոխ
Տեառն. եւ [9]պաշտեցին երկիր՝ անդ Տեառն։

Գլ. Բ

1 Եւ յաղօթս եկաց Աննա եւ ասէ, [10]Հաս-
տատեցաւ սիրտ իմ ի Տէր, եւ բարձ-
րացաւ եղջեւր իմ [11]յԱստուած իմ՝. ըն-
դարձակեցաւ բերան իմ ի վերայ թշնամ-
եաց իմոց, ուրախ եղէ ի փրկութեան
2 քում։ Զի ոչ գոյ սուրբ իբրեւ զՏէր, [12]եւ
ոչ գոյ արդար իբրեւ զԱստուած մեր,
3 եւ ոչ գոյ սուրբ բաց ի քէն՝։ Մի պարծիք
եւ մի խօսիք զամբարտաւանս, եւ մի
ելցէ մեծաբանութիւն ի բերանոյ ձերմէ.
զի Աստուած գիտութեանց Տէր, եւ
[13]Աստուած պատրաստէ զարուեստս իւր՝։
4 Աղեղունք հզօրաց տկարացան, եւ տկարք
5 զգեցան զօրութիւն։ Լցեալք հացիւ
[14]նուաղեցին, եւ քաղցեալք բնակեցան
յերկրի. զի՝ ամուլն ծնաւ եւթն, եւ
6 բազմածինն նուաղեաց յորդւոց։ Տէր մե-
ռուցանէ եւ կեցուցանէ, իջուցանէ ի
7 դժոխս եւ հանէ։ Տէր աղքատացուցա-
նէ եւ մեծացուցանէ, խոնարհեցուցանէ
8 եւ բարձրացուցանէ։ Կանգնէ յերկրէ
զտնանկն, եւ յարուցանէ զաղքատն յաղ-
բեւաց, նստուցանել զնոսա ընդ զօրա-
ւորս ժողովրդեան. եւ աթոռ փառաց
9 ժառանգեցուցանէ [15]նոցա։ Տայ զուխտս
ուխտաւորի, եւ օրհնեաց զամս արդա-
րոյ՝. զի ոչ իւրով զօրութեամբ զօրա-
10 նայ այր հզօր։ [16]Տէր տկար առնէ զհա-
կառակորդս իւր, Տէր սուրբ է։ Մի պար-
ծեսցի իմաստունն յիմաստութիւն իւր,
եւ մի պարծեսցի հզօրն ի զօրութիւն
իւր, եւ մի պարծեսցի մեծատունն ի մե-
ծութիւն իւր. այլ այնու պարծեսցի՝ որ
պարծիցին, իմանալ եւ ճանաչել զՏէր,
եւ առնել զիրաւունս եւ զարդարու-
թիւն ի մէջ երկրի։ Տէր ել յերկինս եւ
որոտաց, եւ ինքն դատի զծագս երկրի,
որ արդարն է, տայ զօրութիւն թագաւո-
րաց մերոց՝, եւ բարձրացուսցէ զեղջեւր
11 օծելոյ իւրոյ։ Եւ [17]թողին զնա անդ
առաջի Տեառն, եւ գնացին յԱրիմաթեմ
ի տուն իւրեանց։ Եւ մանուկն Սամուէլ
կայր ի սպասու երեսաց՝ Տեառն առաջի
12 Հեղեայ քահանայի։ Եւ որդիքն Հեղեայ

[1]Եբր. դարձան եւ եկին ի տուն իւրեանց ի Հռամա, եւ գիտաց Եղկանա զԱննա զկին իւր [2]Եբր. պ—կասէ [3]Եբր. Տեառն [4]Եբր. հատուցի մանուկս ի ստենէ, եւ տարայց զնա [5]Եբր. զբան իւր [6]Եբր. հան զնա ընդ իւր իբրեւ հատոյց զնա ի ստենէ երիւք զուարակօք [7]Եբր. եմոյծ զնա ի տուն Տեառն, ի Սելով և մանուկն էր տղայ։ (25) Եւ սպանին զզուարակն, եւ մատուցին [8]Եբր. այսորիկ կացի յաղօթս, եւ [9]Եբր. երկիր եպագ նա (մանուկն) [10]Եբր. Ցնծացաւ

[11]Եբր. ի Տէր [12]Եբր. զի ոչ գոյ բաց ի քէն, եւ ոչ վէմ իբրեւ զԱստուած մեր [13]Եբր. նովաւ կշռին գործք [14]Եբր. եղեն վարձկան, եւ քաղցեալք հանգեան, մինչեւ [15]Եբր. նոցա. զի Տեառն են հիմունք երկրի, եւ ի վերայ նոցա հաստատեաց զաշխարհ։ (9) Զոտս երկրպագուաց իւրոց պահէ նա, եւ ամբարիշտք լռեսցեն ի խաւարի [16]Եբր. խորտակեսցին հակառակորդք Տեառն. նա ի վերայ նոցա յերկինս որոտասցէ, Տէր դատի զծագս երկրի. տայ զօրութիւն թագաւորին իւրում [17]Եբր. գնաց Եղկանա ի տուն իւր ի Հռամա. եւ մանուկն կայր ի սպասու

[1]քահանայի որդիք ժանտք, եւ ոչ ճա-
13 նաչէին զՏէր։ Եւ իրաւունք քահանային
էին առ ի ժողովրդենէն յամենայնէ որ
զոհէր. գայր մանուկ քահանային՝ մինչ-
դեռ եփէր միսն, եւ երեքժանի մսահան
14 ի ձեռին իւրում. Եւ արկանէր զայն
[2]յաւազան կամ ի սան մեծ պղնձի՞ կամ
ի պտյան, եւ զամենայն որ ինչ գայր ի
մսահանն՝ առնոյր իւր քահանայն։ Ըստ
այսմ օրինակի առնէին ամենայն Իսրայե-
լի որ գային զոհել [1]ի տուն Տեառն՞ ի
15 Սելով։ Եւ մինչչեւ ճարպն ճենճերեալ
էր, գայր մանուկ քահանային եւ ասէր
ցայրն որ զոհէրն, Տուր միս խորովելոյ
քահանային, եւ ոչ [3]առնում ի քէն միս
16 եփեալ ի սանէ՞։ Եւ ասէր այրն որ զո-
հէր, Ճենճերեսցի նախ ճարպն որպէս
օրէն է, եւ ապա առցես քեզ յամենայնէ
որոց եւ ցանկասցի անձն քո. եւ նա
ասէր, Ոչ, բայց եթէ արդ տայցես. եւ
17 եթէ ոչ տաս՝ ուժգին առից։ Եւ էին
այն մեղք մեծամեծք յոյժ մանկանցն
առաջի Տեառն[4]։
18 Եւ Սամուէլ մանուկն պաշտէր առաջի
19 Տեառն արկեալ զփերեւ եփուդ։ Եւ
կրկնոց փոքրիկ առնէր նմա մայրն իւր,
եւ տանէր նմա [5]աւուրց յաւուրս՞ յելա-
նել ընդ առն իւրում զոհել զզոհ [6]աւուրցն։
20 Եւ օրհնեաց Հեղի զԵղկանա եւ զկին
նորա, եւ ասէ, Հատուսցէ քեզ Տէր
զաւակ ի կնոջէդ յայդմանէ փոխանակ
փոխոյն զոր եստուր Տեառն. եւ [7]գնաց
21 այրն ի տեղի իւր՞։ Եւ այց արար Տէր
Աննայի, եւ յղացաւ եւ ծնաւ եւս երիս
ուստերս եւ [8]երիս դստերս. եւ մեծա-
ցաւ մանուկն Սամուէլ առաջի Տեառն։
22 Եւ Հեղի ծերացեալ էր յոյժ, եւ լսէր
զամենայն ինչ զոր առնէին որդիք նո-
րա ընդ որդիսն Իսրայելի, եւ որպէս
ննջեցուցանէին զկանայս ուխտաւորս առ
23 դրան խորանին վկայութեան։ Եւ ասէ
ցնոսա, Ընդէ՞ր առնէք ըստ բանին ըստ
այնմիկ, զոր ես լսեմ [9]բանս ի բերանոյ
24 ամենայն ժողովրդեանն [1]Տեառն։ Մի՛,
որդեակք, զի ոչ է բարւոք լուրն զոր
ես լսեմ, [10]առ ի չծառայելոյ ժողովրդ-
25 եանն Աստուծոյ՞։ Զի եթէ մեղանչելով
մեղանչիցէ այր առն, [11]կացցեն յաղօթս
վասն նորա առ Տէր՞. եւ եթէ Տեառն
մեղանչիցէ, ո՞վ կացցէ յաղօթս վասն
նորա։ Եւ ոչ լսէին ձայնի հօրն իւրեանց.
զի կամելով կամէր Տէր եղծանել զնոսա։
26 Եւ մանուկն Սամուէլ երթայր եւ մե-
ծանայր, եւ հաճոյ էր Աստուծոյ եւ
մարդկան։
27 Եւ եկն [12]հրեշտակ Աստուծոյ առ Հեղի
եւ ասէ, Այսպէս ասէ Տէր. Յայտնելով
յայտնեցայ ամենայն տան հօր քո մինչ-
դեռ էին նոքա յերկրին Եգիպտացւոց
28 ծառայք տան Փարաւոնի. Եւ ընտրեցի
զտուն հօր քո յամենայն [13]զաւազանայն
Իսրայելի քահանայանալ ինձ, ելանել
առ սեղանն իմ, արկանել խունկս եւ
կրել զեփուդն առաջի իմ. եւ ետու տան
հօր քո զամենայն զառ ի հրոյն որդւոցն
29 Իսրայելի [1]ի կերակուր։ Եւ ընդէ՞ր[14]հայե-
ցար ի խունկս իմ եւ ի զոհս իմ ժպիրհ
ակամբ՞, եւ փառաւորեցեր զորդիսն քո
քան զիս, [15]օրհնելով զպտուղ ամենայն
30 զոհիցն Իսրայելի որ է առաջի իմ՞։ Վասն
այդորիկ այսպէս ասէ Տէր Աստուած
Իսրայելի. Ասացի թէ տուն քո եւ տուն
հօր քո շրջեսցին առաջի իմ մինչեւ յյա-
ւիտեան. եւ արդ ասէ Տէր, Քաւ լիցի
ինձ. այլ զփառաւորիչս իմ փառաւորե-
ցից, եւ որ արհամարհէին զիս՝ անար-
31 գեսցի։ Ահա աւուրք եկեսցեն եւ [16]սա-
տակեցից [17]զզաւակ քո եւ [17]զզաւակ
տան հօր քո, եւ մի՛ եղիցի ծեր ի տան
32 քում։ Եւ [18]հայեսցիս սաէպ կողկողագին
յամենայն բարութիւնս զոր արասցէ Տէր
Աստուած Իսրայելի՞, եւ մի՛ եղիցի ծեր
33 ի տան քում զամենայն աւուրս։ Եւ այր
ոչ սատակեցից ի սեղանոյ իմմէ, առ ի
սորելոյ աչաց [19]նորոց եւ մաշելոյ զանձն
[20]նորա. եւ ամենայն մնացորդք տան քո
34 անկցին [21]սրով արանց՞։ Եւ այն նշա-
նակ լիցի քեզ որ եկեսցէ ի վերայ երկո-
ցուն որդւոցն քոց Ոփնեայ եւ Փենեէսի.
35 ի միում աւուր մեռցին երկոքեան։ Եւ

---

[1] Եբր. դուխտե [2] Եբր. ի կաթսայն կամ ի սան կամ ի տապակ [3] Եբր. առնու ի քէն միս եփեալ. այլ ողջ [4] Եբրայեցին յաւելու, զի արհամարհէին արքն զզոհ Տեառն [5] Այլքն՝ ամբաստ ամէ [6] Այլքն՝ տարեկանացն [7] Եբր. գնացին ի տեղի իւրեանց [8] Եբր. երկուս [9] Եբր. զբանս ձեր չարս [10] Եբր. տալ անսաստել ժողովրդեանն Տեառն

[11] Եբր. եւ դատեսցի զնա Աստուած [12] Եբր. այր [13] Կամ, ցեղիցն [14] Եբր. անարգէք զզոհս իմ եւ զնուէրս իմ զորս պատուիրեցի վասն բնակութեանս [15] Եբր. պարարել զձեզ ընտիր ընտիր զոհիւք Իսրայելի. ժողովրդեան իմոյ [16] Եբր. խորտակեցից [17] Եբր. զբազուկ [18] Եբր. տեսցես զտառապանս բնակութեան իմոյ յամենայնի յորս վայելեսցէ Իսրայէլ [19] Եբր. քոց [20] Եբր. քո [21] Եբր. յերիտասարդութեան

յարուցից ինձ քահանայ հաւատարիմ,
որ զամենայն ինչ որ ի սրտի իմում եւ
յանձին իմում արասցէ. եւ շինեցից նմա
տուն հաւատարիմ, եւ շրջեսցի առաջի
36 օծելոյ իմոյ զամենայն աւուրս։ Եւ եղի-
ցի ամենայն որ մնասցէ ի տան քում,
եկեսցէ երկիր պագանել նմա գանգի
միոյ արծաթոյ եւ նկանակի միոյ հացի,
եւ ասիցէ, Ընկեա զիս [1]ի տեղի մի քա-
հանայութեան քո", զի կերայց հաց։

ԳԼ. Գ

1 Եւ մանուկն Սամուէլ կայր ի պաշտօն
Տեառն առաջի Հեղեայ [2]քահանայի. եւ
բան Տեառն պատուական էր յաւուրսն
յայնոսիկ, եւ ոչ գոյր տեսիլ որ գուշակէր։
2 Եւ եղեւ յաւուր յայնմիկ ննջէր Հեղի
ի տեղւոջ իւրում. եւ աչք նորա սկսան
3 ծանրանալ եւ ոչ կարէր տեսանել. Եւ
ճրագն Աստուծոյ չեւ եւս էր անցեալ,
եւ Սամուէլ ննջէր ի տաճարին Տեառն
4 ուր էր տապանակն Աստուծոյ։ Եւ կոչ-
եաց [3]Տէր եւ ասէ, Սամուէլ, Սամուէլ.
5 եւ ասէ", Ահաւասիկ եմ։ Եւ ընթացաւ
առ Հեղի եւ ասէ, Ահաւասիկ եմ ես, զի
կոչեցեր զիս։ Եւ ասէ, ոչ կոչեցի զքեզ,
դարձիր անդրէն եւ ննջեա։ Եւ դարձաւ
6 անդրէն եւ ննջեաց։ Եւ յաւել Տէր միւս-
անգամ [4]կոչել, եւ ասէ, Սամուէլ, Սա-
մուէլ". եւ յարեաւ Սամուէլ չոգաւ առ
Հեղի [2]երկրորդ անգամ" եւ ասէ, Ահա-
ւասիկ եմ, զի կոչեցեր զիս։ Եւ ասէ, ոչ
կոչեցի զքեզ, որդեակ իմ, դարձիր անդ-
7 րէն եւ ննջեա։ Եւ [5]Սամուէլ նախա-
ծանօթ էր Աստուծոյ", եւ չեւ եւս յայտ-
8 նեալ էր նմա բան Տեառն։ Եւ յաւել Տէր
միւս անգամ կոչել զՍամուէլ յերրոր-
դում նուագին. եւ յարեաւ չոգաւ առ
Հեղի եւ ասէ, Ահաւասիկ եմ ես, զի կո-
չեցեր զիս։ Եւ իմացաւ Հեղի՛ թէ Տէր
9 կոչէ զմանուկն։ Եւ ասէ Հեղի ցՍա-
մուէլ, Դարձիր անդրէն եւ ննջեա, [2]որ-
դեակ. եւ եղիցի եթէ կոչեսցէ զքեզ,
ասասցես՝ Խօսեաց, Տէր, զի լուիցէ ծա-
ռայ քո։ Եւ գնաց Սամուէլ եւ ննջեաց
10 ի տեղւոջ իւրում։ Եւ եկն Տէր եկաց
ի վերայ եւ կոչեաց զնա որպէս միան-
գամ եւ միւսանգամ, Սամուէլ, Սա-
մուէլ. եւ ասէ Սամուէլ, Խօսեաց, Տէր,
11 զի լուիցէ ծառայ քո։ Եւ ասէ Տէր ցՍա-
մուէլ, Ահա ես առնեմ զբանս իմ ի մէջ
Իսրայէլի, որպէս զի ամենայնի որ լուիցէ
զնոսա՝ հնչեսցեն երկոքեան ականջք իւր։
12 Յաւուր յայնմիկ յարուցից ի վերայ Հե-
ղեայ զամենայն ինչ զոր խօսեցայ ի վե-
րայ տան նորա. սկսայց եւ կատարեցից,
13 Որպէս պատմեցի նմա եթէ խնդրեցից
վրէժ ի տանէ նորա մինչեւ յաւիտեան
վասն [6]անօրէնութեան որդւոց նորա. զի
հայհոյէին զԱստուած" որդիք նորա, եւ
14 նա ոչ խրատէր զնոսա։ [7]Եւ ոչ այնպէս.
այլ" երդուայ տանն Հեղեայ, եթէ ոչ
քաւեսցի անօրէնութիւն տանն Հեղեայ
[8]խնկովք եւ զոհիւք մինչեւ յաւիտեան։
15 Եւ ննջեաց Սամուէլ մինչեւ ցառա-
ւօտն, [2]եւ կանխեաց ընդ առաւօտն" եւ
եբաց զդուռս տանն Տեառն. եւ Սամուէլ
16 երկեաւ պատմել զտեսիլն Հեղեայ։ Եւ
ասէ Հեղի ցՍամուէլ, Սամուէլ, որդ-
17 եակ. եւ ասէ, Ահաւասիկ ես։ Եւ ասէ,
Զի՞նչ է բանն խօսեցեալ ընդ քեզ. մի՛
թաքուցաներ յինէն. օն եւ օն արասցէ
ընդ քեզ Աստուած, եւ օն եւ օն յաւելցէ՝
եթէ թաքուսցես յինէն բան մի յամե-
18 նայն բանից խօսեցելոց յականջս քո։ Եւ
պատմեաց նմա Սամուէլ զամենայն բանսն,
եւ ոչ թաքոյց ի նմանէ։ Եւ ասէ Հեղի,
[9]Տէր որ ինչ բարի է առաջի իւր ինքն
արասցէ։
19 Եւ մեծացաւ Սամուէլ, եւ էր Տէր
ընդ նմա, եւ ոչ անկաւ յամենայն բա-
20 նից նորա ի գետին։ Եւ գիտաց ամենայն
Իսրայէլ ի Դանայ մինչեւ ցԲերսաբէէ թէ
հաւատարիմ է Սամուէլ ի մարգարէ
21 Տեառն։ Եւ յաւել Տէր [10]գուշակել ի
Սելով, թէ" յայտնեցաւ Տէր Սամուէլի
ի Սելով ըստ բանին Տեառն. [2]եւ հաւա-
տարիմ եղեւ Սամուէլ լինել ի մարգարէ
Տեառն յամենայն Իսրայէլի ի ծագաց
երկրին մինչեւ ի ծագս։ Եւ Հեղի ծե-
րացեալ էր յոյժ, եւ որդիք նորա երթա-
յին երթալով եւ չար էր ճանապարհ նոցա։"

ԳԼ. Դ

1 Եւ եղեւ [11]ընդ աւուրսն ընդ այնոսիկ,
ժողովեցին այլազգիքն ի վերայ" Իսրայէլի.

[1] Եբր. ի մին ի քահանայութեանց [2] 3Եբր. [illegible] [3] Եբր. Տէր զՍամուէլ. եւ նա ասէ [4] Եբր. կոչել. Սամուէլ [5] Եբր. Սամուէլ չեւ եւս գիտէր զՏէր

[6] Եբր. անօրէնութեանն զոր գիտաց. եթէ ածէին անէծս անձանց [7] Եբր. Վասն այնորիկ. [8] Եբր. նուիրօք [9] Եբր. Տէր է նա. [10] Եբր. երեւել ի Սելով. զի [11] Եբր. բանն Սամուէլի ամենայն

եւ ել Իսրայէլ ընդդէմ [1]նոցա ի պատե-
րազմ, եւ բանակեցան յԱբենեզեր. եւ
2 այլազգիքն բանակեցան յԱփեկ։ Եւ ճա-
կատէին այլազգիքն ընդդէմ Իսրայէլի,
եւ խմբեցաւ պատերազմն, եւ պարտեցաւ
այր Իսրայէլի յերեսաց այլազգեացն, եւ
հարան ի ճակատու անդ չորք հազարք
3 արանց։ Եւ եկն զօրն ի բանակն. եւ
ասեն ծերքն Իսրայէլի, Ընդէ՞ր արդեւք
պարտեաց զմեզ Տէր այսօր առաջի այ-
լազգեացն. առցուք առ մեզ ի Սելովայ
զտապանակ ուխտին [2]Աստուծոյ մերոյ՝՝,
եւ եկեսցէ ի մէջ մերում եւ փրկեսցէ զմեզ
4 ի ձեռաց թշնամեաց մերոց։ Եւ առաք-
եաց ժողովուրդն ի Սելով, եւ առին
անտի զտապանակ ուխտին Տեառն զօ-
րութեանց՝ որ նստի ի քերովբէս. եւ
երկոքեան որդիքն Հեղեայ ընդ տապա-
նակի ուխտին Աստուծոյ՝ Ոփնի եւ Փե-
5 նեէս գնային։ Եւ եղեւ իբրեւ եկն տա-
պանակ ուխտին Տեառն ի բանակն, ա-
ղաղակեաց ամենայն Իսրայէլ մեծաձայն,
6 եւ հնչեաց երկիրն։ Եւ լուան այլազ-
գիքն զբարբառ աղաղակին, եւ ասեն
այլազգիքն. Զի՞նչ է բարբառ մեծի ա-
ղաղակին այնորիկ ի բանակի Եբրայեց-
ւոցն. եւ գիտացին թէ տապանակն
7 Տեառն եկն ի բանակն։ Եւ երկեան այ-
լազգիքն եւ ասեն, [3]Այն Աստուածք
նոցա եկին ի բանակն. ապրեցո զմեզ,
Տէր, այսօր՝՝. Վա՜յ մեզ զի ոչ եղեւ [4]մեզ
8 այսպիսի յերէկ եւ յեռանդ. Վա՜յ մեզ,
եւ ո՞ ապրեցուսցէ զմեզ ի ձեռաց Աստ-
ուածոցն հզօրացն այնոցիկ. այն Աստ-
ուածք են որ հարին զԵգիպտոս ամե-
նայն [5]հարուածովք, եւ յամենայն անա-
9 պատին՝՝։ Քաջացարուք եւ լերուք արք, ո՛
այլազգիք, գուցէ ծառայիցէք Եբրայեց-
ւոցն զոր օրինակ ծառայեցին ձեզ. լե-
րուք արք եւ պատերազմեցայք ընդ նո-
10 սա։ Եւ պատերազմեցան ընդ նոսա, եւ
փախեաւ այր Իսրայէլի իւրաքանչիւր ի
յարկս իւրեանց. եւ եղեն հարուածք
մեծամեծք յոյժ, եւ անկան յԻսրայէլէ
11 երեսուն հազար [6]գնդուց. Եւ տապա-
նակն Աստուծոյ առաւ, եւ երկոքին որ-
դիքն Հեղեայ մեռան, Ոփնի եւ Փենեէս։
12 Եւ ընթացաւ այր [7]Յամինացի ի բա-
նակէ անտի, եւ եկն ի Սելով յաւուր
յայնմիկ. եւ ձորձք իւր պատառեալք
13 եւ հող զգլխով իւրով։ Եւ եկն, եւ ա-
հա Հեղի նստէր աթոռով իւրով առ
դրանն, եւ դիտէր զճանապարհն. զի էր
սիրտ նորա տագնապեալ վասն տապա-
նակին Աստուծոյ. եւ եմուտ այրն գոյժ
արկանել ի քաղաքին, եւ աղաղակեաց
14 [8]քաղաքն։ Եւ լուաւ Հեղի զձայն ա-
ղաղակին եւ ասէ, Զի՞նչ է ձայն աղա-
ղակին այնորիկ. եւ այրն փութացաւ
15 մտանել եւ տալ գոյժ Հեղեայ։ Եւ Հեղի
էր ամաց իննսուն եւ ութից, եւ աչք
իւր վառեալ էին եւ ոչ տեսանէր. [9]եւ
ասէ Հեղի ցարսն որ շուրջ կային զնո-
վաւ, Զի՞նչ է բարբառ աղաղակին այ-
16 նորիկ։ Եւ այրն փութացեալ եմուտ առ
Հեղի եւ ասէ ցնա՝՝, Ես եմ որ եկի ի
բանակէ անտի, եւ ես եմ որ փախեայ
այսօր ի պատերազմէն. եւ ասէ, Զի՞նչ
գործ գործեցաւ, որդեակ, պատմեա ինձ։
17 Պատասխանի ետ [10]պատանին եւ ասէ,
Փախեաւ այր Իսրայէլի յերեսաց այլազգ-
եացն, եւ հարուածք մեծամեծք եղեն
ի ժողովրդեանն. եւ երկոքին որդիքն
քո մեռան, Ոփնի եւ Փենեէս, եւ տա-
18 պանակն Աստուծոյ առաւ։ Եւ եղեւ իբ-
րեւ յիշեաց զտապանակն Աստուծոյ,
անկաւ Հեղի յաթոռոյն յետս առ դրանն,
եւ բեկաւ ողն նորա եւ մեռաւ, զի այր
ծեր էր եւ ծանրացեալ. եւ նա դատեաց
զԻսրայէլ ամս [11]քսան։
19 Եւ նու նորա, կին Փենեէսի, յղի էր
մերձ ի ծնունդս. իբրեւ լուաւ զգոյժն
եթէ առաւ տապանակն Աստուծոյ, եւ
թէ մեռաւ սկեսրայրն նորա եւ այր իւր,
[12]եկաց եւ ծնաւ, զի պատեցան զնովաւ
20 երկունք իւր։ Եւ ի ժամանակի իւրում
մեռանէր. եւ ասեն ցնա կանայքն որ
շուրջ զնովաւն կային, Մի՛ երկնչիր, զի
ուստր ծնար. եւ ոչ ետ պատասխանի,
21 եւ ոչ իմացաւ սիրտ նորա։ Եւ [13]կոչեցին
զմանուկն Վայքաբոլթ՝՝. ի վերայ տա-
պանակին Աստուծոյ եւ ի վերայ սկես-
րայրին նորա եւ ի վերայ առն իւրոյ։
22 Եւ [14]ասեն, Բարձեալ են փառք Իսրա-
յէլի յառնուլ տապանակին Տեառն, [4]եւ

[1] Եբր. Փղշտացւոց (այլազգեաց) [2] Եբր. Տեառն [3] Եբր. Եկն Աստուած ի բանակն. եւ ասեն [4] Եբր. դ–յ–ւ–է [5] Եբր. հարուածովք յանապատին [6] Եբր. հետեւակ [7] Եբր. Բենիամինեան

[8] Եբր. ամենայն քաղաքն [9] Եբր. (16) Եւ ասէ այրն ցՀեղի [10] Եբր. պատգամաւորն [11] Եբր. քառասուն [12] Եբր. խոնարհեցաւ [13] Եբր. կոչեաց զմանուկն Իքաբոդ. եւ ասէ, Բարձան փառք յԻսրայէլէ [14] Եբր. ասէ

վասն մեռանելոյ սկեսրէին նորա եւ
առն իւրոյ։

Գլ. Ե

1 Եւ այլազգիքն առին զտապանակն Աս-
տուծոյ, եւ տարան զնա յԱբենեզերայ
2 յԱզովտոս։ Եւ առին այլազգիքն զտա-
պանակն [1]Տեառն եւ տարան ի տուն
Դագոնայ, եւ կանգնեցին զնա առ Դա-
3 գոնաւ։ Եւ կանխեցին Ազովտացիքն ի
վաղիւ անդր, [2]եւ մտին ի տուն Դա-
գոնայ," եւ տեսին զԴագոն կործանեալ
ի վերայ երեսաց իւրոց ի գետնի առաջի
տապանակին Տեառն. եւ կանգնեցին
զԴագոն, եւ կացուցին զնա ի տեղւոջ
իւրում։ [2]Եւ ծանրացաւ ձեռն Տեառն ի
վերայ Ազովտացւոցն եւ չարչարեաց
զնոսա, եւ եհար զնոսա յերաստանս իւր-
եանց, զԱզովտոս եւ զսահմանս նորա։"
4 Եւ եղեւ իբրեւ կանխեցին ընդ առաւօտն
ի վաղիւ անդր, եւ ահա Դագոն կործա-
նեալ կայր ի վերայ երեսաց իւրոց յեր-
կիր առաջի տապանակի ուխտին Տեառն.
եւ գլուխն Դագոնայ [2]եւ երկոքին թաթք
ոտից նորա խորտակեալք եւ ցրուեալք
ընդ մէջ գետոյն", եւ երկոքին դաս-
տակք ձեռաց նորա անկեալք զսեմովքն.
բայց միայն [3]ողնայարն Դագոնայ մնաց-
5 եալ էր"։ Վասն այնորիկ ոչ կոխեն քուրմք
Դագոնայ եւ ամենայն որ մտանէ ի տուն
Դագոնայ՝ զսեամս տանն Դագոնայ յԱ-
զովտոս մինչեւ ցայսօր. [2]այլ քայլելով
6 քայլեն եւ անցանեն։" Եւ ծանրացաւ
ձեռն Տեառն ի վերայ [4]Ազովտայ, եւ
[5]ած ի վերայ նոցա հարուածս յերաս-
տանս, եւ եռացոյց մկունս յանդս նոցա.
եւ եղեւ շշուկ մեծ մահու ի քաղաքին"։
7 Եւ տեսին արք Ազովտայ թէ այն
այնպէս է, ասեն, Ոչ նստցի տապա-
նակն [6]Աստուծոյ առ մեզ, զի ծանրա-
ցաւ ձեռն նորա ի վերայ մեր եւ ի վե-
8 րայ Դագոնայ աստուծոյն մերոյ։ Եւ ա-
ռաքեցին ժողովեցին զամենայն նախա-
րարս այլազգեացն առ ինքեանս, եւ ա-
սեն, Զի՞նչ արասցուք տապանակին Աս-
տուծոյ Իսրայելի. եւ ասեն [7]Գեթացիքն,
Փոխեսցի" տապանակն Աստուծոյ Իսրա-
յելի [2]առ մեզ". եւ փոխեցաւ տապա-
9 նակն Աստուծոյ [8]ի Գէթ։ Եւ եղեւ յետ
փոխելոյ նորա անդր, լինէր ձեռն Տեառն
ի վերայ քաղաքին եւ խռովութիւն մեծ
յոյժ. եւ [9]չարչարեաց զարս քաղաքին
ի փոքուէ մինչեւ ցմեծամեծս, եւ [10]եհար
զնոսա յերաստանս իւրեանց. եւ արա-
րին Գեթացիքն իւրեանց երաստանս"։
10 Եւ առաքեցին զտապանակն Աստու-
ծոյ [11]յԱսկաղոն. եւ եղեւ ի մտանել տա-
պանակին Աստուծոյ [11]յԱսկաղոն, աղա-
ղակ բարձին [12]Ասկաղոնացիքն եւ ասեն,
[13]Ընդէ՞ր դարձուցէք" զտապանակն Աս-
տուծոյ Իսրայելի առ մեզ սպանանել
11 զմեզ եւ զժողովուրդս մեր։ Եւ առա-
քեցին եւ ժողովեցին զամենայն նա-
խարարս այլազգեացն, եւ ասեն, Ա-
ռաքեցէք զտապանակն Աստուծոյ Իսրա-
յելի եւ նստցի ի տեղւոջ իւրում, եւ
մի՛ սպանցէ զմեզ եւ զժողովուրդս
մեր. զի եհաս շշուկ մահու յամենայն
[14]քաղաքին ծանրացեալ յոյժ յորմէ հետէ
եմուտ տապանակն Աստուծոյ Իսրայելի
12 անդր"։ Եւ [15]կենդանիքն որ ոչ էին մեռ-
եալ՝ հարան [16]յերաստանս իւրեանց", եւ
ել աղաղակ քաղաքին յերկինս։

Գլ. Զ

1 Եւ էր տապանակն Տեառն յանդաս-
տանին այլազգեաց զեւթն ամիս. [2]եւ
2 եռացոյց յերկիր նոցա մուկն։" Եւ կո-
չեցին այլազգիքն զքուրմն եւ զիղձոն
[2]եւ զգէտս իւրեանց" եւ ասեն, Զի՞նչ
արասցուք տապանակին Տեառն, ցու-
ցէք մեզ եւ առաքեսցուք զնա ի տեղի
3 իւր։ Եւ ասեն եթէ առաքիցէք զտա-
պանակն Աստուծոյ Իսրայելի [2]ուխտին
Տեառն", մի՛ առաքիցէք զնա ունայն,
այլ տալով տաջիք նմա [17]զհարուածոցն,
եւ ապա բժշկեսջիք եւ [18]հաշտեսցի ընդ
ձեզ. զուցէ" ոչ վերանայցէ ձեռն նորա
4 ի ձէնջ։ Եւ ասեն, Զի՞նչ տայցեմք [19]ընդ
զանցին նորա". եւ ասեն, Ըստ թուոյ
նախարարացն այլազգեաց հինգ [20]երաս-
տանս ոսկիս արարէք եւ հինգ մուկն

[1]Եբր. Աստուծոյ [2]Եբր. —— [3]Եբր. Դագոն (ձկնիկն) մնացեալ էր ի վերայ նորա [4]Եբր. Ազովտացւոց, եւ սատակեաց զնոսա [5]Կ—ք, եհար զնոսա այտմամբք թանչից. զԱզովտոս եւ զսահմանս նորա [6]Եբր. Աստուծոյ Իսրայելի [7]Եբր. Ի Գէթ փոխեսցի

[8]Եբր. Իսրայելի [9]Եբր. եհար [10]Եբր. երեւեցան ի նոսա այտմունք թանչից [11]Եբր. յԱկկարոն [12]Եբր. Ակկարոնացիքն [13]Եբր. Դարձուցին [14]Եբր. քաղաքին. ծանրացեալ էր յոյժ ձեռն Աստուծոյ անդ [15]Եբր. արքն [16]Կ—ք, այտմամբ թանչից [17]Եբր. զյանցանացն [18]Եբր. յայտնի լիցի ձեզ թէ ընդէր [19]Եբր. վասն զյանցանացն [20]Կ—ք, այտմունս թանչից

ոսկի. զի [1]հարուածք են ի ձեզ եւ յիշ-
5 խանս ձեր եւ ի ժողովրդեանդ"։ Եւ արդ
արարէք զպատկերս [2]երաստանաց ձե-
րոց, եւ զնմանութիւն մկանց ձերոց՝
ապականչաց երկրին. եւ տուք [3]Տեառն
փառս, զի" թեթեւացուսցէ զձեռն իւր
ի ձէնջ եւ ի դից ձերոց եւ յերկրէ ձերմէ։
6 Եւ ընդէ՞ր ծանրացուցանէք զսիրտս ձեր,
որպէս ծանրացոյց Եգիպտոս եւ Փարա-
ւոն զսիրտս իւրեանց. ո՞չ ապաքէն [4]յոր-
ժամ խաղաց նոքօք", ապա արձակեցին
7 զնոսա եւ գնացին։ Եւ արդ առէք եւ
արարէք սայլ մի նոր, եւ երկուս երինջս
[5]անդրանկածինս առանց որթուց", եւ
լծեցէք զերինջսն ի սայլն, եւ քեցեցէք
8 զորթսն ի հետոց նոցա ի տուն. Եւ ա-
ռէք զտապանակն Տեառն եւ դիք զնա
ի վերայ սայլին, եւ զանօթսն զոսկիս
զոր տայցէք նմա [6]ընդ զանցին", եւ դի-
ջիք [7]ի քուրձ արգոբ" ի կողմանէ նո-
րա, եւ առաքեսջիք զնա եւ [8]վարեսջիք
9 զնա եւ" երթիցէ. Եւ տեսջիք եթէ ի
մուտս սահմանաց իւրոց երթիցէ ընդ
Բեթսամիւս՝ նա արար մեզ զչարիսս մե-
ծամեծս զայսոսիկ. ապա թէ ոչ՝ գիտաս-
ցուք եթէ ոչ ձեռն նորա եկն ի վերայ
մեր, այլ [9]վրիպակ իմն գործեցաւ" ի մեզ։
10 Եւ արարին [10]այլազգիքն այնպէս, եւ
առին երկուս երինջս [11]անդրանկածինս
եւ լծեցին զնոսա ի սայլն, եւ զորթս
11 նոցա արգելին ի տան։ Եւ եդին զտա-
պանակն Տեառն ի վերայ սայլին, եւ
[12]զքուրձն արգոբ" եւ զմկունսն ոսկիս
եւ զպատկերս [13]երաստանաց իւրեանց։
12 Եւ ուղղեցան երինջքն ընդ ճանապարհ
մտիցն Բեթսամիւսայ, ընդ մի շաւիղ
երթային եւ [14]վաստակէին եւ ոչ խոտո-
րէին ոչ յաջ եւ ոչ յահեակ. եւ նախա-
րարք այլազգեացն երթային զհետ [15]նո-
րա մինչեւ ի սահմանս Բեթսամիւսայ։
13 Եւ որ ի Բեթսամիւսն էին՝ հնձէին հունձս
ցորենոյ ի հովիտսն. եւ ամբարձին զաչս
իւրեանց եւ տեսին զտապանակն [8]Տեառն,
14 եւ ուրախ եղեն [16]ընդ առաջ նորա"։ Եւ
սայլն եմուտ յանդաստանն Յեսուայ Բեթ-
սամիւսացւոյ. եւ [17]կանգնեցին անդ առ
նովաւ" վէմ մի մեծ, եւ պատառեցին
զփայտ սայլին, եւ զերինջսն հանին
15 յողջակէզս Տեառն։ Եւ Ղեւտացիքն հա-
նին զտապանակն Տեառն, եւ [18]զքուրձն
արգոբ ընդ նմին եւ զանօթսն ոսկիս որ
ի նմա", եւ եդին ի վերայ վիմին մեծի.
եւ արք Բեթսամիւսայ մատուցին ող-
ջակէզս, եւ զոհեցին զոհս յաւուր յայն-
16 միկ Տեառն։ Եւ հինգ նախարարքն այլ-
ազգեաց տեսանէին, եւ դարձան յԱկ-
17 կարոն յաւուր յայնմիկ։ Եւ [19]երաստանքն
ոսկիք զոր եստուն այլազգիքն Տեառն [20]ընդ
զանցին, մին Ազովտայ էր եւ մին Գազայ
եւ մին Ասկաղոնի եւ մին Գեթայ եւ մին
18 Ակկարոնի"։ Եւ մկունքն ոսկիք ըստ
թուոյ ամենայն քաղաքացն այլազգեաց,
հնգեցուն նախարարացն, յամուր քա-
ղաքաց՝ մինչեւ ցաւանս [21]Փերեզացւոյն,
մինչեւ ցվէմն" յորոյ վերայ եդին զտա-
պանակ ուխտին Տեառն, մինչեւ ցայսօր
յանդին Յեսուայ Բեթսամիւսացւոյ։
19 Եւ [22]ոչ հաճեցան որդիքն Յեքոնեայ
ընդ արս Բեթսամիւսացւոցն, զի տեսին
զտապանակն Տեառն. եւ" եհար ի նո-
ցանէ յիսուն հազար եւ եւթանասուն
այր. եւ սուգ առ ժողովուրդն, զի ե-
հար Տէր ի ժողովրդեանն հարուածս մե-
20 ծամեծս յոյժ։ Եւ ասեն արք Բեթսա-
միւսացիք, Ո՞ կարասցէ [23]շրջել առաջի
Տեառն Աստուծոյ սրբոյս այսորիկ. եւ
արդ առ ո՞ ելանիցէ [8]տապանակ Տեառն"
21 ի մէնջ։ Եւ առաքեցին հրեշտակս առ
բնակիչս Կարիաթարիմայ եւ ասեն, Դար-
ձուցին այլազգիքն զտապանակն Տեառն,
իջէք եւ հանէք զնա առ ձեզ։

## Գլ. Է

1 Եւ եկին արք Կարիաթարիմայ, եւ հա-
նին անտի զտապանակ ուխտին Տեառն,
եւ տարան զնա ի տուն Աբինադաբայ
որ ի բլրին. եւ զԵղիազար զորդի նորա
սրբեցին պահել զտապանակ ուխտին
2 Տեառն։ Եւ եղեւ յօրէ յորմէ հետէ էր

[1]Եբր. մի հարուած է ամենեցուն ձեզ եւ նախարարաց ձերոց [2]Կամ, այտմանց թանչից [3]Եբր. Աստուծոյ Իսրայէլի փառս. թերեւս [4]Կամ, զարմանալիս արար ի նոսա [5]Եբր. ստնտուս, յորոց վերայ չիցէ եդեալ լուծ [6]Եբր. վասն յանցանացն [7]Եբր. յարկեղ [8]Յեբր. [illegible] [9]Եբր. պատահար իմն եղեւ [10]Եբր. արքն [11]Եբր. ստնտուս [12]Եբր. զարկղն [13]Կամ, այտմանց թանչից [14]Եբր. բառաչէին [15]Եբր. նոցա [16]Եբր. իբրեւ տեսին

[17]Եբր. եկաց անդէն. եւ էր անդ [18]Եբր. զարկղն ընդ նմին, յորում էին անօթքն ոսկիք [19]Եբր. այսոքիկ են այտմունք թանչից [20]Եբր. վասն յանցանաց. վասն Ազովտայ՝ մի, վասն Գազայ մի, վասն Ասկաղոնի՝ մի, վասն Գեթայ՝ մի, վասն Ակկարոնի՝ մի [21]Եբր. անպարիսպս եւ մինչեւ ցվէմն մեծ [22]Եբր. եհար զարսն Բեթսամիւսայ, զի հայեցան ի տապանակ անդր Տեառն. եւ [23]Եբր. կալ

տապանակն ի Կարիաթարիմ՝ բազմա-
ցան աւուրքն եւ եղեն ամք քսան. եւ
[1]հայեցաւ ամենայն տունն Իսրայելի զկնի
3 Տեառն։ Եւ խօսեցաւ Սամուէլ ընդ ա-
մենայն տանն Իսրայելի եւ ասէ, Թէ
յամենայն սրտէ ձերմէ դարձեալ էք առ
Տէր, ի բաց արարէք զաստուածսն օ-
տարոտիս ի միջոյ ձերմէ եւ [2]զանտառսն,
եւ պատրաստեցէք զսիրտս ձեր առ Տէր,
եւ ծառայեցէք նմա միայնոյ, եւ փրկեսցէ
4 զձեզ ի ձեռաց այլազգեացն։ Եւ ի բաց
արարին որդիքն Իսրայելի զԲահաղիմն
եւ [3]զանտառսն Աստարովթայ", եւ ծա-
5 ռայեցին [4]նմա միայնոյ։ Եւ ասէ Սա-
մուէլ, Ժողովեցէք զամենայն Իսրայէլ
ի Մասփա, եւ կացից յաղօթս վասն
6 ձեր առ Տէր։ Եւ ժողովեցան ի Մասփա
եւ հանին ջուր, եւ [5]հեղին յերկիր ա-
ռաջի Տեառն. եւ պահեցին յաւուր յայն-
միկ, եւ ասեն, Մեղաք առաջի Տեառն։
Եւ դատեցաւ Սամուէլ զորդիսն Իսրա-
յելի ի Մասփա։
7 Եւ լուան այլազգիքն եթէ ժողովե-
ցան որդիքն Իսրայելի ի Մասփա, եւ
ելին նախարարք այլազգեացն ի վերայ
Իսրայելի. եւ լուան որդիքն Իսրայելի
8 եւ երկեան յերեսաց այլազգեացն։ Եւ
ասեն որդիքն Իսրայելի ցՍամուէլ, Մի՛
դադարեր ի գոչելոյ վասն մեր առ Տէր
Աստուած [6]քո, եւ փրկեսցէ զմեզ ի ձե-
9 ռաց այլազգեացն։ Եւ առ Սամուէլ գառն
մի դիեցիկ, եւ եհան զնա [7]ողջակէզ
Տեառն հանդերձ ամենայն ժողովրդ-
եամբն". եւ գոչեաց Սամուէլ առ Տէր
վասն Իսրայելի, եւ լուաւ նմա Տէր։
10 Եւ մինչդեռ մատուցանէր Սամուէլ
զողջակէզն, մերձեցան այլազգիքն ի
պատերազմ ի վերայ Իսրայելի. եւ ո-
րոտաց Տէր մեծաւ բարբառով յաւուր
յայնմիկ ի վերայ այլազգեացն, եւ [8]շփո-
11 թեցան եւ անկան առաջի Իսրայելի։ Եւ
ելին արքն Իսրայելի ի Մասփայ եւ հա-
լածեցին զայլազգիսն, եւ հարին զնոսա
12 մինչեւ ի ներքոյ Բեթքորրայ։ Եւ առ
Սամուէլ վէմ մի, եւ կանգնեաց ի մէջ
Մասփայ եւ ի մէջ [9]Բեթսանայ հնոյն".
եւ կոչեաց զանուն նորա Աբենեզեր, [10]վէմ
օգնականի". եւ ասէ, Մինչեւ ցայս վայր
13 օգնեաց մեզ Տէր։ Եւ կորացոյց Տէր զայլ-
ազգիսն. եւ ոչ եւս յաւելին եկանել ի վերայ
սահմանացն Իսրայելի. եւ եղեւ ձեռն
Տեառն ի վերայ այլազգեացն զամենայն
14 աւուրս Սամուէլի։ Եւ դարձուցին զքա-
ղաքսն զոր առին այլազգիքն յորդւոցն
Իսրայելի, եւ ետուն զնոսա անդրէն Իս-
րայելի, [11]յԱսկաղոնէ մինչեւ ցԳէթ. եւ
[12]զսահմանս Իսրայելի հանին" ի ձեռաց
այլազգեացն. եւ էր խաղաղութիւն ի
մէջ Իսրայելի եւ ի մէջ Ամովրհացւոցն։
15 Եւ դատէր Սամուէլ զԻսրայէլ զա-
16 մենայն աւուրս կենաց իւրոց։ Երթայր
ամ յամէ, եւ շրջէր զԲեթէլ եւ [13]զԳա-
ղգաղ եւ զՄասփա, եւ դատէր զԻս-
րայէլ յամենայն [14]սրբեալսն յայնոսիկ։
17 Եւ դարձ իւր էր յԱրիմաթեմ, զի անդ
էր տուն նորա. եւ անդ դատէր զԻս-
րայէլ, եւ շինեաց անդ սեղան Տեառն։

## ԳԼ. Ը

1 Եւ եղեւ իբրեւ ծերացաւ Սամուէլ,
կացոյց զորդիս իւր դատաւորս Իսրայելի։
2 Եւ այս են անուանք որդւոց նորա. անդ-
րանկանն՝ Յովէլ, եւ անուն երկրորդին
3 Աբիա. դատաւորք ի Բերսաբէէ։ Եւ ոչ
գնացին որդիքն նորա զճանապարհս նո-
րա, եւ թիւրեցան զհետ զօշաքաղու-
թեան. առնուին կաշառս եւ թիւրէին
զիրաւունս։
4 Եւ ժողովեցան ամենայն արք Իսրա-
յելի եւ եկին առ Սամուէլ յԱրիմաթեմ,
5 Եւ ասեն ցնա, Դու ծերացար,
եւ որդիք քո ոչ գնան զճանապարհ քո.
եւ արդ կացո ի վերայ մեր թագաւոր
6 դատել զմեզ որպէս եւ այլ ազգք։ Եւ
չար թուեցաւ բանն յաչս Սամուէլի, զի
ասացին թէ Տուր մեզ թագաւոր դա-
տել զմեզ. եւ յաղօթս եկաց Սամուէլ
7 առ Տէր։ Եւ ասէ Տէր ցՍամուէլ, Լուր
ձայնի ժողովրդեանդ, որպէս եւ խօսե-
ցան ընդ քեզ. զի ոչ եթէ զքեզ [15]ա-
նարգեցին, այլ զիս մերժեցին չթագա-
8 ւորել ի վերայ նոցա։ Ըստ ամենայն
գործոց զոր արարին ընդ իս յօրէ յորմէ
հանի զնոսա յԵգիպտոսէ մինչեւ ցայսօր,
եւ թողին զիս եւ ծառայեցին աստուա-
ծոց օտարաց, նոյնպէս առնեն նոքա եւ

[1]Եբր. ողբաց [2]Եբր. զԱստարովթ, որ էր կին չաստուած Սիդոնացւոց [3]Եբր. զԱստարովթ [4]Եբր. Տեառն [5]Եբր. հեղին [6]Եբր մեր [7]Եբր. բովանդակ ողջակէզ Տեառն [8]Եբր. խռովեցոյց զնոսա, [9]Եբր. Սենայ [10]Յ Եբր. [illegible]

[11]Եբր. յԱկկարոնէ [12]Եբր. զսահման իւր զերծոյց Իսրայէլ [13]Եբր. զԳաղգաղա [14]Եբր. տեղիսն [15]Եբր. մերժեցին

9 ընդ քեզ ։ Եւ արդ լուր ձայնի նոցա ․
բայց գնելով գնիցես վկայութիւն նոցա,
եւ պատմեսցես նոցա զիրաւունս թա-
գաւորի որ թագաւորեսցէ նոցա ։
10 Եւ խօսեցաւ Սամուէլ զամենայն
պատգամս Տեառն առ ժողովուրդն որ
11 խնդրեցին ի նմանէ թագաւոր ․ Եւ ասէ ,
Այս ինչ լիցին իրաւունք թագաւորին
որ թագաւորեսցէ ի վերայ ձեր ․ զուս-
տերս ձեր առցէ եւ արասցէ կառավարս
եւ հեծեալս եւ սուրհանդակս առաջի
12 կառաց իւրոց ․ Եւ կացուսցէ զնոսա իւր
հազարապետս եւ [1]հարիւրապետս , եւ
հնձել զհունձս նորա [2]եւ կթել զկութս
նորա", եւ առնել նմա զէնս եւ անօթս
13 կառաց ։ Եւ զդստերս ձեր առցէ յիւղա-
գործս եւ ի խոհակերարս եւ ի հացեփ-
14 եացս ։ Եւ զանդս ձեր եւ զայգիս ձեր
եւ զձիթենիս ձեր զաղնիւս՝ առցէ , եւ
15 տացէ ստրկաց իւրոց ։ Եւ զսերմանս ձեր
եւ զայգիս ձեր տասանորդեսցէ , եւ տա-
ցէ ներքինեաց իւրոց եւ ստրկաց իւրոց ։
16 Եւ զծառայս ձեր եւ զաղախնայս ձեր
եւ [3]զանդեայս ձեր զաղնիւս եւ զէշս ձեր
առցէ եւ [4]տասանորդեսցէ ի գործ իւր ։
17 Եւ զհօտս ձեր տասանորդեսցէ , եւ դուք
18 եղիջիք նմա ծառայք ։ Եւ աղաղակես-
ջիք յաւուր յայնմիկ յերեսաց թագաւո-
րին ձերոյ զոր ընտրեցէք ձեզ , եւ ոչ
լուիցէ ձեզ Տէր յաւուրսն յայնոսիկ ․ [2]զի
դուք ձեզէն ընտրեցէք ձեզ թագաւոր։"
19 Եւ ոչ կամեցաւ ժողովուրդն լսել Սա-
մուելի ․ եւ ասեն ցնա , Ոչ այդպէս է ,
20 այլ [5]թագաւորեսցէ ի վերայ մեր ․ Եւ ե-
ղիցուք եւ մեք իբրեւ զայլ ազգս , եւ
դատեսցի զմեզ թագաւորն մեր , եւ ելցէ
առաջի մեր եւ պատերազմեսցի զպա-
21 տերազմ մեր ։ Եւ լուաւ Սամուէլ զա-
մենայն բանս ժողովրդեանն , եւ խօսե-
22 ցաւ զնոսա յականջս Տեառն ։ Եւ ասէ
Տէր ցՍամուէլ , Լուր ձայնի նոցա եւ
թագաւորեա նոցա թագաւոր ։ Եւ ասէ
Սամուէլ ցարս Իսրայելի , Երթիցէ իւ-
րաքանչիւր ոք ի քաղաք իւր ։

ԳԼ ․ Թ

1 Եւ էր այր մի յորդւոցն Բենիամինի եւ
անուն նորա Կիս , որդի Աբիելի , որդւոյ
[6]Արեդայ , որդւոյ Բեքովրաթայ , որդւոյ
Աւփեայ , որդւոյ առն Յեմինացւոյ ․ այր
2 զօրաւոր ։ Եւ էր նորա որդի , եւ անուն
նորա Սաւուղ , այր բարի եւ անձնեայ․
եւ ոչ գոյր յորդիսն Իսրայելի այր լաւ
քան զնա ․ ուսովք չափ ի վեր բարձր էր
քան զամենայն ժողովուրդն ։
3 Եւ կորեան էշք[7] հօրն Սաւուղայ ․ ասէ
Կիս ցՍաւուղ ցորդի իւր , Առ ընդ քեզ
մի ի մանկանցդ , եւ արիք երթայք
4 խնդրեցէք զէշսն ։ Եւ գնացին , եւ անցին
ընդ լեառնն Եփրեմի , եւ անցին ընդ եր-
կիրն Սարիսայ , եւ ոչ գտին ․ եւ անցին
ընդ երկիրն Սաղիմայ , եւ ոչ ուրեք էին․
եւ անցին ընդ երկիրն Յեմինացւոյն , եւ
5 ոչ գտին ։ Եւ իբրեւ եկին ի Սիփ , ասէ
Սաւուղ ցպատանեակն իւր որ ընդ նմա,
Եկ դարձցուք անդրէն , գուցէ թողեալ
հօր մերոյ զէշսն եւ զմէնջ հոգասցէ ։
6 Եւ ասէ ցնա պատանին , Ահա այր Աս-
տուծոյ է ի քաղաքիս յայսմիկ , այր փա-
ռաւոր , եւ զամենայն զոր ինչ խօսիցի՝
լինելով լինի ․ եւ արդ երթիցուք անդր,
զի պատմեսցէ մեզ զճանապարհս մեր ,
7 եւ գնասցուք ։ Եւ ասէ Սաւուղ ցպա-
տանին [2]որ ընդ նմա", Ահա երթայ-
ցեմք , եւ զի՞նչ տանիցիմք առնն [2]Աս-
տուծոյ ․ զի հաց [2]եւս սպառեցաւ յա-
մանաց մերոց , եւ չիք ինչ որ կայցէ
ընդ մեզ աւելի տանել առնն Աս-
8 տուծոյ ։ Եւ յաւել պատանին տալ պա-
տասխանի Սաւուղայ եւ ասէ , Ահա գտա-
նի ի ձեռին իմում չորրորդ սկեղ ար-
ծաթոյ , եւ [8]տացես առնն Աստուծոյ ,
եւ պատմեսցէ մեզ զճանապարհս մեր ։
9 Եւ յառաջ ի մէջ Իսրայելի այսպէս ա-
սէր իւրաքանչիւր ոք յորժամ երթայր
հարցանել զԱստուած , Եկայք երթիցուք
առ տեսանողն ․ զի զմարգարէ յառաջ
10 տեսանող կոչէր ժողովուրդն ։ Եւ ասէ
Սաւուղ ցպատանին իւր , Բարւոք է
բանդ , եկ երթիցուք ․ եւ չոքան ի քա-
11 ղաքն ուր էր այրն Աստուծոյ ։ Եւ մինչ-
դեռ ելանէին ընդ զառ ի վեր քաղաքին,
գտին նոքա աղջկունս որ ելանէին հա-
նել ջուր , եւ ասեն ցնոսա , Եթէ գուցէ՞
12 աստ տեսանող ։ Պատասխանի ետուն
նոցա աղջկունքն եւ ասեն , Գոյ․ ահա-
ւասիկ առաջի ձեր այդր ․ արդ արագե-
ցէք , զի վասն աւուրս եկեալ է ի քա-

[1] Ոմն· յիսնապետս , եւ հերկել զհերկս նորա
[2] Յոմն· պ—կ—ս [3] Ոմն· զընտիրս խոմ զեւ իտոսարդս
[4] Ոմն· վարեսցէ [5] Ոմն· կացցէ թագաւոր

[6] Ոմն· Սերորայ [7] Ոմն—յեսյն յ—եւլ— , Կիսեայ ,
[8] Ոմն· տաց

ղաքս, զի զոհ է այսօր ժողովրդեանն ի
13 [1]Բամա. Յորժամ մտանիցէք ի քաղաքդ,
ապա գտանիցէք զնա ի քաղաքիդ, մինչչև
ելթեալ իցէ նորա ի Բամա ուտել, քանզի
ոչ ուտէ ժողովուրդն մինչև ի մտանել
նորա, զի նա օրհնէ զզոհն, և ապա
ուտեն կոչնականքն. և արդ ելէք զի
14 վասն աւուրս գտանէք զնա այդր: Եւ
ելին ի քաղաքն. և իբրև մտին նոքա
ի քաղաքամէջն, և ահա Սամուէլ ել
ընդ առաջ նոցա երթալ ի Բամա:
15 Եւ էր Տեառն յայտնեալ յունկն Սա-
մուելի աւուրբ միով յառաջ քան զգալն
16 Սաւուղայ առ նա, Եթէ վաղիւ ի սոյն
ժամու առաքեցից առ քեզ այր յերկրէն
Բենիամինի, և օծցես զնա իշխան ի
վերայ ժողովրդեան իմոյ Իսրայելի. և
փրկեսցէ զժողովուրդ իմ ի ձեռաց այլ-
ազգեացն. զի հայեցայ ի տառապանս
ժողովրդեան իմոյ, քանզի եհաս գոչիւն
17 նոցա առ իս: Եւ Սամուէլ ետես զՍա-
ւուղ, և Տէր ասէ ցնա, Ահաւասիկ է
այրն զորմէ ասացի քեզ եթէ նա իշ-
18 խեսցէ ժողովրդեան իմում: Եւ մատեաւ
Սաւուղ առ Սամուէլ ի մէջ [2]քաղաքին
և ասէ, Պատմեա ինձ՝ ո՞ր տուն իցէ
19 տեսանողին: Պատասխանի ետ Սամուէլ
և ասէ ցՍաւուղ, Ես ինքնին իսկ եմ.
ել առաջի իմ ի Բամա, և կերիցես ընդ
իս այսօր, և արձակեցից զքեզ վաղիւ,
և զամենայն ինչ որ ի սրտի քում է՝
20 պատմեցից քեզ: Եւ վասն իշոցն երեքօ-
րէից կորուսելոց մի՛ ինչ ածեր զմտաւ
քանզի գտեալ են. և ո՞յր [3]իցեն վայել-
չութիւնք" Իսրայելի, եթէ ոչ քո և ա-
21 մենայն տան հօր քո: Պատասխանի ետ
Սաւուղ և ասէ, Ո՞չ ապաքէն առն միոյ
Յեմինացւոյ եմ ես, փոքու զաւազանի
ցեղին Իսրայելի, և կրտսերոյ ցեղի
յամենայն իշխանութենէ Բենիամինի. և
ընդէ՞ր խօսեցար ընդ իս ըստ բանիդ ըստ
22 այդմիկ: Եւ ա՛ռ Սամուէլ զՍաւուղ և
զպատանին նորա, և տարաւ զնոսա
[4]ի վանս իւր". և ետ նոցա տեղի ի վե-
րոյ կոչնականացն իբրև զերեսուն ա-
23 րամբ: Եւ ասէ Սամուէլ ցխոհակերն,
Տուր ինձ զմասնն զոր ետու ցքեզ, զորմէ
24 ասացի դնել զնա առ քեզ: Եւ [5]եփեաց
խոհակերն զազդրն և զԹամբն որ զնո-
վաւ, և եդ զայն առաջի Սաւուղայ:
Եւ ասէ Սամուէլ ցՍաւուղ, Ահաւա-
սիկ նշխար, դիր զայդ առաջի քո և
կեր, [6]զի վկայութիւն լիցի քեզ առ ի
ժողովրդոց, և կրծեսցես". և եկեր Սա-
ւուղ ընդ Սամուէլի յաւուր յայնմիկ:
25 Եւ էջ ի Բամայ ի քաղաքն և [7]ար-
կին անկողինս Սաւուղայ ի տանիսն, և
26 ննջեաց": Եւ եղև ընդ ելանել առաւօ-
տուն՝ կոչեաց Սամուէլ զՍաւուղ ի տան-
եացն և ասէ, Արի եկ և արձակեցից
զքեզ. և յարեաւ Սաւուղ և ել ինքն
27 և Սամուէլ արտաքս: Եւ մինչդեռ ի-
ջանէին նոքա յեզր քաղաքին, ասէ Սա-
մուէլ ցՍաւուղ, Ասա ցպատանին և
անցցէ յառաջ քան զմեզ. (և անց.) և
դու կացջիր այսօր աստ և լուիցես
[8]զպատգամս Տեառն":

Գլ. Ժ

1 Եւ ա՛ռ Սամուէլ զսրուակն իւղոյ և
եհեղ ի գլուխ նորա, և համբուրեաց
զնա և ասէ ցնա, Ո՞չ ապաքէն օծ զքեզ
Տէր ի վերայ ժառանգութեան իւրոյ իշ-
խան, [9]և ի վերայ ժողովրդեան իւրոյ
Իսրայելի. և դու իշխեսցես ժողովրդ-
եան Տեառն, և փրկեսցես զնա ի ձե-
ռաց թշնամեաց իւրոց շուրջանակի. և
այն եղիցի քեզ նշանակ՝ եթէ Տէր օծ
2 զքեզ:" Իբրև երթայցես այսօր յինէն,
գտցես երկուս արս առ գերեզմանաւն
Հռաքելի՝ [10]ի լերինն Բենիամինի, զի մե-
ծամեծս վազիցեն", և ասիցեն ցքեզ,
Գտան էշքն յորոց զնուն ի խնդիր երթ-
եալ էիր. և թողեալ հօր քո զիրս ի-
շոցն՝ հոգայ վասն ձեր, և ասէ, Զի՞նչ
3 արարից վասն որդւոյ իմոյ: Եւ երթի-
ցես անտի ևս անդր, և հասցես մին-
չև ի կաղնին [11]Դեբովրայ, և գտցես անդ
երիս արս որ ելանիցեն առ Աստուած ի
Բեթէլ. միոյն բարձեալ ուլս երիս, և
միոյն բարձեալ երիս [12]ամանս հացի, և
4 միոյն բարձեալ տիկ մի գինւոյ: Եւ
հարցցեն զքէն ի խաղաղութիւն, և տա-
ցեն քեզ [13]երկուս պտուղս հացի", և
5 առցես ի ձեռաց նոցա: Եւ ապա մտցես

[1]Նշանակէ բարձրաւանդակ, [illegible] կամ և է [illegible]: [2]Եբր. դրան [3]Կամ, իցէ ամենայն ցանկութիւն [4]Եբր. ի բազմականն [5]Եբր. եբարձ

[6]Եբր. զի ի սահմանեալ ժամանակին պահեալ է քեզ, յորժամ ասացի հրաւիրել զժողովուրդն [7]Եբր. խօսեցաւ ընդ Սաւուղայ ի տանիսն [8]Եբր. զպատգամն Աստուծոյ [9]Եբր. պակասէ [10]Եբր. ի սահմանս Բենիամինի ի Սեղսաղ [11]Եբր. Թաբովրայ [12]Եբր. նկանակս [13]Եբր. զերկուս ի հացից անտի

ի բլուրն Աստուծոյ, ուր է գունդ այլազգ-
եացն. եւ եղիցի յորժամ մտանիցես ի
քաղաքն, գիպեսցիս պարու մարգարէից
իջելոց ի Բամայ, եւ առաջի նոցա սրինգ
եւ թմբուկ եւ փող եւ քնար, եւ ինք-
6 եանք մարգարէացեալք: Եւ խաղասցէ
ի վերայ քո Հոգի Տեառն, եւ մարգա-
րէասցիս եւ դու ընդ նոսա, եւ դարձ-
7 ցիս յայր այլ: Եւ եղիցի յորժամ գայ-
ցեն նշանքս այսոքիկ ի վերայ քո, ա-
րասցես զամենայն ինչ զոր գտանիցէ
8 ձեռն քո, զի Աստուած ընդ քեզ է: Եւ
իջցես յառաջ քան զիս ի Գաղգաղա. եւ
ահա ես իջից առ քեզ մատուցանել ող-
ջակէզս եւ զոհս խաղաղականս. զեւթն
օր զադարեսցես մինչեւ եկից առ քեզ,
եւ իմացուցից քեզ զոր ինչ առնիցես:
9 Եւ եղեւ ի դարձուցանել զթիկունս
իւր գնալոյ ի Սամուելէ՝ շրջեաց նմա
Աստուած սիրտ այլ, եւ եկին հասին
նմա ամենայն նշանքն յաւուր յայնմիկ:
10 Եւ եկն անտի ի բլուրն, եւ ահա պար
մարգարէից ընդ առաջ նորա. եւ խա-
ղաց ի վերայ նորա Հոգի Աստուծոյ, եւ
11 մարգարէացաւ ի մէջ նոցա: Եւ եղեւ
իբրեւ ծանեան զնա ամենեքին որոց յե-
րէկն եւ յեռանդ տեսեալ էր զնա, եթէ
ահա եւ նա ի մէջ մարգարէիցն մար-
գարէանայր, ասէ ժողովուրդն իւրա-
քանչիւր ցընկեր իւր, Զի՞նչ է այդ որ եղեւ
որդւոյ Կիսեայ, կամ թէ եւ Սաւո՞ւղ ընդ
12 մարգարէս իցէ: Եւ պատասխանի ետ ոմն
ի նոցանէ եւ ասէ, Եւ ո՞վ է հայր նորա, [1]եթէ
ոչ Կիս". վասն այնորիկ եղեւ յառակս թէ
13 Եւ Սաւո՞ւղ ի մարգարէս: Եւ վախճանե-
եաց զմարգարէանալն, եւ եկն ի բլուրն:
14 Եւ ասէ [2]ընտանի նորա ցնա եւ ցծա-
ռայն նորա, Ո՞ր չոգայք. եւ ասեն,
Խնդրել զէշսն. եւ իբրեւ տեսաք թէ չեն
15 ուրեք, մտաք առ Սամուէլ: Եւ ասէ
[2]ընտանին ցՍաւուղ, Պատմեա ինձ զի՞նչ
16 ասաց քեզ Սամուէլ: Եւ ասէ Սաւուղ
[3]ցընտանին իւր, Պատմելով պատմեաց
ինձ եթէ գտան էշքն: Բայց զբան թա-
գաւորութեանն ոչ եհան նմա ի վեր,
զոր ասաց նմա Սամուէլ:
17 Եւ ժողովեաց Սամուէլ զամենայն
18 ժողովուրդն առ Տէր ի Մասփա: Եւ ա-
սէ ցորդիսն Իսրայէլի, Այսպէս խօսե-
ցաւ Տէր Աստուած Իսրայէլի եւ ասէ,
Ես եմ որ հանի զորդիսն Իսրայէլի յե-
գիպտոսէ, եւ փրկեցի զձեզ ի ձեռաց
[1]Փարաւոնի արքային" Եգիպտացւոց, եւ
յամենայն թագաւորութեանց նեղչաց
19 ձերոց: Եւ դուք այսօր [4]անարգեցէք
զԱստուած", որ է փրկիչ ձեր [5]յամենե-
ցունց որ շուրջ զձեւք են եւ նեղեն
զձեզ", եւ ասացէք՝ Ոչ այդպէս, այլ զի
կացուսցես ի վերայ մեր թագաւոր. եւ
արդ կացէք առաջի Տեառն [1]ըստ իշխա-
նութեանց ձերոց, եւ" ըստ [6]գաւազանաց
20 ձերոց, եւ ըստ հազարաւորաց ձերոց: Եւ
մատոյց Սամուէլ զամենայն գաւազանս
Իսրայէլի, եւ ել վիճակն գաւազանին Բե-
21 նիամինի: Եւ մատոյց զգաւազանն Բենիա-
մինի ըստ ցեղից, եւ ելանէր վիճակն ցեղին
Մատտարեայ.[1]եւ մատուցին զցեղն Մատ-
տարեայ ըստ արանց," եւ ելանէր վիճակն
Սաւուղայ որդւոյ Կիսեայ. եւ [7]խնդրէր զնա
22 եւ ոչ գտանէր: Եւ [8]եհարց միւսանգամ
Սամուէլ" զՏէր, Եթէ գայցէ՞ այսր այրն.
եւ ասէ Տէր, Աւադիկ թաքուցեալ է ընդ
23 կարասիս: Եւ [9]ընթացաւ եւ ա՛ռ զնա
անտի, եւ կացոյց զնա" ի մէջ ժողո-
վրդեանն. եւ բարձրացաւ քան զամե-
նայն ժողովուրդն թիկամբք չափ ի վեր:
24 Եւ ասէ Սամուէլ ցամենայն ժողովուրդն,
Եթէ Տեսանիցէ՞ք զոր ընտրեաց իւր
Տէր, զի ոչ գոյ նման նորա [10]յամենեսին
ի ձեզ. եւ ծանեան" ամենայն ժողովուրդն
25 եւ ասեն, Կեցցէ՛ արքայ: Եւ ասաց Սա-
մուէլ ժողովրդեանն զիրաւունս [11]թա-
գաւորին, եւ գրեաց ի մատենի եւ եդ
առաջի Տեառն. եւ արձակեաց Սա-
մուէլ զամենայն ժողովուրդն, եւ գնաց
26 իւրաքանչիւր ոք ի տեղի իւր: Եւ Սաւուղ
գնաց ի տուն իւր ի Գաբաա. եւ գնա-
ցին որդիք զօրութեան զորոց գրգռեաց
27 Տէր զսիրտս նոցա՝ ընդ Սաւուղայ: Եւ
որդիք ժանտք ասէին թէ Ո՞ է սա որ
փրկեսցէ զմեզ. եւ անարգեցին զնա, եւ
ոչ բերին նմա պատարագս[12]:

## Գլ. ԺԱ

1 Եւ [1]եղեւ յետ ամսոյ միոյ աւուրց" ել
Նաաս Ամմոնացի, եւ բանակեցաւ զՅա-

[1]Յեբր. [illegible] [2]Եբր. հօրեղբայրն [3]Եբր. ցհօրեղբայր

[4]Եբր. մերժեցէք զԱստուած ձեր [5]Եբր. յամենայն չարեաց ձերոց եւ ի նեղութեանց ձերոց [6]Այսինքն, ցեղից, այսպէս եւ ի [illegible] [7]Եբր. խնդրեցին [8]Եբր. հարցին միւսանգամ [9]Եբր. ընթացան եւ առին զնա անտի. եւ եկաց նա [10]Եբր. յամենայն ժողովրդեանն. եւ գոչեաց [11]Եբր. թագաւորութեան [12]Եբրայեցին յաւելու, եւ եղեւ որպէս խուլ

բիսու Գաղաադու. եւ ասեն ամենայն
արք Յաբիսայ ցՆաաս Ամոնացի, Ուխտ-
եա ընդ մեզ ուխտ, եւ ծառայեսցուք
2 քեզ։ Եւ ասէ ցնոսա Նաաս Ամոնացի,
Այնու ուխտեցից ընդ ձեզ ուխտ, եթէ
[1]հանիցէք զամենայն աչս ձեր զաջոյ.
եւ եդից նախատինս ի վերայ ամենայն
3 Իսրայէլի։ Եւ ասեն արք Յաբիսայ ցՆաաս,
Թոյլ տուր մեզ աւուրս եւթն, եւ ա-
ռաքեսցուք հրեշտակս յամենայն սահ-
մանս Իսրայէլի, եթէ չիցէ ոք որ փրկիցէ
զմեզ, ելցուք առ քեզ։
4 Եւ եկին հրեշտակքն ի Գաբաա [2]առ
Սաւուղ", եւ խօսեցան զբանսն յականջս
ժողովրդեանն. եւ ամբարձին ժողո-
5 վուրդն զձայնս իւրեանց եւ լացին։ Եւ
ահա Սաւուղ գայր [3]ընդ առաւօտն" յանդոյ,
եւ ասէ Սաւուղ, Զի՞նչ իցէ զի լայ ժո-
ղովուրդն. եւ պատմեցին նմա զպատ-
6 գամս որդւոցն Յաբիսայ։ Եւ խաղաց
Հոգի [4]Տեառն ի վերայ Սաւուղայ իբրեւ
լուաւ զբանսն զայնոսիկ. եւ սրտմտե-
7 ցաւ բարկութիւն նորա յոյժ։ Եւ առ
երկուս եզինս եւ յօշեաց զնոսա, եւ ա-
ռաքեաց յամենայն սահմանս Իսրայէլի
ի ձեռն հրեշտակաց եւ ասէ, Որ ոք ոչ
ելանիցէ զհետ Սաւուղայ եւ զհետ Սա-
մուէլի, ըստ այդմ օրինակի արասցեն
զեզինս նորա։ Եւ անկաւ ահ Տեառն ի
վերայ [5]ամենայն ժողովրդեանն [5]Իսրա-
յէլի, եւ խրախուսեցին իբրեւ զմի այր։
8 Եւ հանդէս արար նոցա ի Բեզեկ. [6]ա-
մենայն այր Իսրայէլացի եկին վեց" հա-
րեւր հազար, եւ այր Յուդայ [7]եւթա-
9 նասուն հազար։ Եւ ասէ ցհրեշտակսն
եկեալս, Այսպէս ասասջիք ցարս Յա-
բիսայ Գաղաադու, Վաղիւ եղիցի ձեզ
փրկութիւն ընդ ջեռուցանել արեգա-
կանն. եւ եկին հրեշտակքն [5]ի քաղաքն,
եւ պատմեցին արանցն Յաբիսայ. եւ
10 ուրախ եղեն։ Եւ ասեն արք Յաբիսայ
[5]ցՆաաս Ամոնացի", Վաղիւ ելցուք մեք
առ ձեզ, եւ արասջիք ընդ մեզ որ ինչ
11 հաճոյ իցէ առաջի ձեր։ Եւ եղեւ ի վա-
ղիւ անդր, եւ բաժանեաց Սաւուղ զժո-
ղովուրդն յերիս առաջս. եւ մտին ի մէջ
բանակին յառաւօտին պահուն, եւ հար-
կանէին զորդիսն Ամոնայ մինչեւ ի ջեռ-
նուլ արեւուն, եւ եղեն մնացեալքն
ցրուեալք, եւ ոչ մնացին ի նոցանէ եր-
կու ի միասին։
12 Եւ ասէ ժողովուրդն ցՍամուէլ, Ո՞վ
է որ ասացն թէ մի՛ թագաւորեսցէ մեզ
Սաւուղ. տուր ի ձեռս զարսն եւ սպան-
13 ցուք զնոսա։ Եւ ասէ [8]Սամուէլ, Մի՛
ոք մեռցի յաւուր յայսմիկ, զի այսօր
արար Տէր [9]զփրկութիւն Իսրայէլի"։
14 Եւ խօսեցաւ Սամուէլ ընդ ժողովր-
դեանն եւ ասէ, Երթիցուք ի Գաղգաղա,
եւ արասցուք նուակատիս թագաւո-
15 րութեանն։ Եւ չոգաւ ամենայն ժողո-
վուրդն ի Գաղգաղա, եւ [10]օծ անդ Սա-
մուէլ զՍաւուղ ի թագաւոր" առաջի
Տեառն ի Գաղգաղա. եւ զոհեցին անդ
զոհս խաղաղականս առաջի Տեառն. եւ
ուրախ եղեւ անդ [8]Սամուէլ եւ ամե-
նայն ժողովուրդն յոյժ։

ԳԼ. ԺԲ

1 Եւ ասէ Սամուէլ ցամենայն արս Իս-
րայէլացիս, Ահաւասիկ լուայ ձայնի ձե-
րում յամենայնի զոր ասացէք ինձ, եւ
2 թագաւորեցուցի ձեզ թագաւոր։ Եւ
արդ աւասիկ թագաւոր երթայ առաջի
ձեր. ես ծերացեալ եմ, [11]եւ թայց նստայց".
եւ որդիքդ իմ աւադիկ են ի միջի ձե-
րում. եւ ես շրջեցայ առաջի ձեր ի ման-
3 կութենէ իմմէ մինչեւ ցայսօր։ Ահաւա-
սիկ կամ ես. տուք զինէն պատասխա-
նի առաջի Տեառն եւ առաջի օծելոյ նո-
րա, եթէ զեզն ուրուք առի՞, կամ զէշ
ուրուք վարեցի՞, կամ յաղթահարեցի՞
զոք ի ձէնջ, կամ թէ զրկեցի՞ ինչ զոք.
յո՞յր ձեռաց առի [12]հաս կամ կօշիկս. տուք
զինէն պատասխանի", եւ հատուցից ձեզ։
4 Եւ ասեն [5]ցՍամուէլ, Ոչ մեղար մեզ եւ"
ոչ զրկեցեր զմեզ եւ ոչ նեղեցեր զմեզ,
եւ ոչ առեր ի ձեռաց ուրուք եւ ոչ ինչ։
5 Եւ ասէ Սամուէլ ցժողովուրդն, Վկայ
լիցի Տէր ի միջի ձերում, եւ վկայ օծ-
եալն նորա այսօր յաւուր յայսմիկ, զի
ոչ գտէք ի ձեռին իմում եւ ոչ ինչ. եւ
ասեն, Լիցի վկայ։
6 Եւ [13]խօսեցաւ Սամուէլ ընդ ժողովրդ-
եանն եւ ասէ, Վկայ լիցի" Տէր՝ որ ա-
րար զՄովսէս եւ զԱհարոն, որ եհան

[1] Ոմանք. հանից [2] Ոմանք. Սաւուղայ [3] Ոմանք. զհետ եզանցն [4] Ոմանք. Աստուծոյ [5] Յոմանք. պակասէ
[6] Ոմանք. եւ եղեն որդիքն Իսրայէլի երեք [7] Ոմանք. երեսուն

[8] Ոմանք. Սաւուղ [9] Ոմանք. փրկութիւն յԻսրայէլի
[10] Ոմանք. թագաւորեցուցին անդ զՍաւուղ [11] Ոմանք. եւ ալեւորեալ [12] Ոմանք. կաշառ, եւ կափուցի զաչս իմ այնու [13] Ոմանք. ասէ Սամուէլ ցժողովուրդն,

7 զհարսն [1]մեր յԵգիպտոսէ ։ Եւ արդ կա-
ցէք յառաջ եւ դատեցայց զձեզ առաջի
Տեառն, եւ պատմեցից ձեզ զամենայն
արդարութիւնս զոր արար Տէր ի միջի
8 ձերում եւ ի հարսն ձեր ։ Յորժամ եմուտ
Յակոբ եւ որդիք նորա յԵգիպտոս, [2]եւ
լլկեաց զնոսա Եգիպտոս," եւ աղաղա-
կեցին հարքն [1]մեր առ Տէր, եւ առաք-
եաց Տէր զՄովսէս եւ զԱհարոն, եւ [3]ե-
հան զհարսն մեր յԵգիպտոսէ եւ բնակե-
9 ցոյց" ի տեղւոջս յայսմիկ ։ Եւ մոռացան
զՏէր Աստուած իւրեանց, եւ մատնեաց
զնոսա ի ձեռս Սիսարայ զօրավարին
[2]Յաբինայ արքային" Ասովրայ, եւ ի ձեռս
այլազգեաց եւ ի ձեռս թագաւորին Մո-
վաբայ, եւ պատերազմեցան ընդ նոսա։
10 Եւ աղաղակեցին առ Տէր եւ ասեն,
Մեղաք՝ զի թողաք զՏէր եւ ծառայե-
ցաք Բահաղիմացն եւ [4]անտառացն, եւ
արդ ապրեցո զմեզ ի ձեռաց թշնամեաց
11 մերոց, եւ ծառայեսցուք քեզ ։ Եւ ա-
ռաքեաց Տէր զՅերոբաաղ եւ [5]զԲարակ
եւ զՅեփթայէ եւ [6]զՍամփսոն, եւ ապ-
րեցոյց զձեզ ի ձեռաց թշնամեաց ձերոց
շուրջանակի, եւ բնակեցէք վստահու-
12 թեամբ ։ Եւ տեսէք զի Նաաս Ամոնացի
եկն ի վերայ ձեր, եւ ասացէք, Ոչ այդ-
պէս, այլ զի թագաւոր թագաւորեսցէ
ի վերայ մեր. եւ Տէր Աստուած [1]մեր՝
13 թագաւոր [1]մեր ։ Եւ արդ ահաւասիկ թա-
գաւորդ զոր ընտրեցէք եւ զոր խնդրե-
ցէք, եւ ահա ետ ձեզ Տէր թագաւոր ։
14 Եթէ երկնչիցիք ի Տեառնէ եւ ծառայի-
ցէք նմա, եւ լսիցէք ձայնի նորա եւ ոչ
հեստիցէք բերանոյ Տեառն, եւ լինիցիք
դուք եւ թագաւորն որ թագաւորեսցէ
ձեզ՝ երթալ զկնի Տեառն, [7]ոչ եղիցի
ձեռն Տեառն ի վերայ ձեր եւ ի վերայ
15 թագաւորին ձերոյ"։ Ապա թէ ոչ լսի-
ցէք ձայնի Տեառն, եւ հեստիցէք բե-
րանոյ Տեառն, եղիցի ձեռն Տեառն ի
վերայ ձեր եւ ի վերայ [8]թագաւորին
16 ձերոյ"։ Եւ արդ կացէք եւ տեսէք զբանս
զայս մեծ, զոր արասցէ Տէր առաջի ա-
17 չաց ձերոց ։ Ո՞չ ապաքէն հունձք ցո-
րենոյ են այսօր. կարդացից առ Տէր,
եւ տացէ ձայնս եւ անձրեւս, եւ գիտա-
ջիք եւ տեսջիք թէ մեծ է չարութիւն
ձեր զոր արարէք առաջի Տեառն՝ խնդ-
րել ձեզ թագաւոր ։
18 Եւ կարդաց Սամուէլ առ Տէր, եւ ետ
Տէր ձայնս եւ անձրեւս յաւուր յայնմիկ.
եւ երկեաւ ամենայն ժողովուրդն յոյժ
19 ի Տեառնէ եւ ի Սամուելէ ։ Եւ ասէ ա-
մենայն ժողովուրդն ցՍամուէլ, Կաց
յաղօթս առ Տէր Աստուած քո վասն
ծառայից քոց, եւ մի՛ մեռցուք. զի յա-
ւելաք յամենայն մեղս մեր եւ ի չարիս,
20 եւ խնդրեցաք մեզ թագաւոր ։ Եւ ասէ
Սամուէլ ցժողովուրդն, Մի՛ երկնչիք.
դուք արարէք զայդ ամենայն չարիս,
բայց մի՛ խոտորիցիք ի Տեառնէ, եւ ծա-
ռայեցէք Տեառն յամենայն սրտէ ձերմէ.
21 Եւ [9]մի՛ երթայցէք զհետ ոչնչիցն, որ ոչ
ինչ վճարեն, եւ ոչ փրկեն. քանզի [10]չեն
22 աստուածք"։ Զի ոչ մերժեսցէ Տէր զժո-
ղովուրդ իւր վասն անուան իւրոյ մեծի
զի [11]հեզութեամբ առ" զձեզ Տէր իւր
23 ժողովուրդ ։ Եւ ինձ քաւ լիցի մեղան-
չել Տեառն, հեղգալ առ ի չանելոյ ա-
ղօթս վասն ձեր. [2]եւ ծառայեցէք Տեառն,"
եւ ցուցից ձեզ զճանապարհն զբարի եւ
24 զուղիղ ։ Բայց երկերուք ի Տեառնէ, եւ
ծառայեցէք նմա ճշմարտութեամբ յա-
մենայն սրտէ ձերմէ. քանզի տեսէք
25 զմեծամեծսն զոր արար ընդ [12]մեզ։ Եւ
եթէ յարդախութեամբ խարդախիցէք,
եւ դուք եւ թագաւոր ձեր սատակիցիք ։

## ԳԼ. ԺԳ

1 Որդի տարեւոր Սաւուղ ի թագաւորել
իւրում, եւ երկուս ամս թագաւորեաց
2 ի վերայ Իսրայելի ։ Եւ ընտրեաց իւր
Սաւուղ երիս հազարս արս յարանցն Իս-
րայելի. եւ էին ընդ նմա երկու հա-
զարք ի Մաքմաս եւ ի լերինն Բեթելայ,
էին ընդ Յովնաթանու հազար ի Գաբաա
Բենիամինի. եւ զմնացորդս ժողովրդ-
եանն արձակեաց յիւրաքանչիւր բնա-
կութիւնս ։
3 Եւ եհար Յովնաթան [13]զՆասիբ այլ-
ազգի, որ էր ի բլրին", եւ լուան այլ-
ազգիքն ։ Եւ Սաւուղ փող եհար ընդ
ամենայն երկիրն եւ ասէ, [14]Եթէ անգոս-
4 նեցին ծառայքն"։ Եւ լուան ամենայն
Իսրայէլ, ասեն՝ եթէ եհար Սաւուղ

[1]Եբր· ձեր [2]Յն Եբր· [illegible] [3]Եբր· հանին զհարսն ձեր յԵգիպտոսէ եւ բնակեցուցին [4]Եբր· Աստարովթայ [5]Եբր· զԲեդան [6]Եբր· զՍամուէլ [7]Եբր· Աստուծոյ ձերոյ [8]Եբր· հարցն ձերոց

[9]Եբր· մի՛ խոտորիցիք· քանզի [10]Եբր· ոչինչ են նոքա [11]Եբր· կամեցաւ առնել [12]Եբր· ձեզ [13]Եբր· զպահակ այլազգեացն որ ի Գաբաա [14]Եբր· Լուիցեն Եբրայեցիքն

¹զհասիր այլազգի եւ յամօթ արար Իսրայէլ
զայլազգիսն . եւ գոչեաց" ժողովուրդն
5 զհետ Սաւուղայ ի Գաղգաղա ։ Եւ այ-
լազգիքն ժողովեալ էին ի պատերազմ ընդ
Իսրայելի . եւ ելին ի վերայ Իսրայելի
երեսուն հազար կառաց եւ վեց հազար
հեծելոց , եւ ժողովուրդն իբրեւ զաւազ
առ եզերբ ծովու բազմութեամբ . ելին
եւ բանակեցան ի Մաքմաս , ²յանդիման
6 Բեթորոնայ ընդ հարաւ"։ Եւ ետես այր
Իսրայելի եթէ անձուկ է նմա ³մերձե-
նալ առ նա". եւ թաքեաւ ժողովուրդն
յայրս եւ ⁴ի գոմս եւ ի վէմս եւ ⁵ի խոր-
7 խորատս եւ ի ջրհորս . Եւ ⁶որ անցա-
նելոցն էին ընդ Յորդանան՝ անցին" յեր-
կիրն Գադայ եւ Գաղաադու . եւ Սաւուղ
դեռ անդէն եւս էր ի Գաղգաղա , եւ
ամենայն ժողովուրդն ⁷թօթափեցան ի
նմանէ ։
8 Եւ դադարեաց զեւթն օր վկայու-
թեանն որպէս եւ ասաց Սամուէլ". եւ
ոչ եկն Սամուէլ ի Գաղգաղա . եւ ցրուե-
9 ցաւ ժողովուրդն իւր ի նմանէ ։ Եւ ասէ
Սաւուղ , ⁸Մատուցէք զի արարից" ող-
ջակէզս եւ խաղաղականս . եւ եհան զող-
10 ջակէզսն ։ Եւ եղեւ իբրեւ կատարեաց
մատուցանել զողջակէզսն, եկն Սամուէլ.
եւ ել Սաւուղ ընդ առաջ նորա օրհնել
11 զնա ։ Եւ ասէ Սամուէլ , Զի՞նչ գործե-
ցեր ։ Եւ ասէ Սաւուղ , Զի տեսի թէ
ցրուեցաւ ժողովուրդ իմ յինէն , եւ դու
ոչ եկիր ⁹որպէս ուխտեցեր ի վկայու-
թեանն" աւուրցն , եւ այլազգիքն ժողո-
12 վեցան ի Մաքմաս , Եւ ասացի թէ արդ
իջանիցեն այլազգիքն ի վերայ իմ ի Գաղ-
գաղա , եւ զերեսս Տեառն չեր աղաչեալ.
13 ժուժեցայ եւ մատուցի զողջակէզսն ։ Եւ
ասէ Սամուէլ ցՍաւուղ , ¹⁰Ի զուր է քեզ,
զի ոչ պահեցեր զպատուիրանն իմ զոր
պատուիրեաց Տէր". զի այժմ հաստա-
տէր Տէր զթագաւորութիւն քո ի վերայ
14 Իսրայելի մինչեւ յաւիտեան . Բայց արդ
մի՛ կացցէ թագաւորութիւն քո. խնդրես-
ցէ իւր Տէր այր ըստ սրտի իւրում ,
եւ տացէ զնա պատուիրանաւ յիշխան
ի վերայ ժողովրդեան իւրոյ . զի ոչ պա-
հեցեր զոր ինչ պատուիրեաց քեզ Տէր ։
15 Եւ յարեաւ Սամուէլ եւ գնաց ¹¹ի Գաղ-
գաղայ զճանապարհ իւր ։ Եւ մնացորդք
ժողովրդեանն ելին զհետ Սաւուղայ ընդ-
առաջ պատերազմականն ժողովրդեանն ։
Եւ ի հասանել նոցա" ի Գաղգաղայ ի
Գաբաա Բենիամենի . եւ հանդէս արար
Սաւուղ ժողովրդեանն գտելոյ ընդ նմա,
16 իբրեւ վեց հարիւրոց արանց ։ Եւ Սա-
ւուղ եւ Յովնաթան որդի նորա եւ ժո-
ղովուրդն գտեալ ընդ նոսա՝ նստան ի
Գաբաա Բենիամենի . եւ այլազգիքն բա-
նակեալ էին ի Մաքմաս ։
17 Եւ ելանէր ապականիչն ¹²յանդէ այլ-
ազգեացն յերիս առաջս . առաջ մի ¹³որ
հայէր" ընդ ճանապարհն Ոփերայ ¹⁴յաղ-
18 բեւրն Սաղովլայ . Եւ առաջ մի ¹⁵ընդ ճա-
նապարհն՝ որ հայէր ի Բեթորոն". եւ առաջ
մի՝ ¹⁶ընդ ճանապարհն որ հայէր ի Գաբայէ
յաւեալ ի Գայի Սաբային անապատին"։
19 Եւ գործիչ երկաթոյ ոչ գտանէր յա-
մենայն երկրին Իսրայելի , քանզի ասէին
այլազգիքն եթէ գուցէ առնիցեն Եբրա-
20 յեցիքն սուսեր եւ գեղարդն ։ Եւ իջա-
նէին ամենայն Իսրայելացիքն յերկիրն
այլազգեաց՝ թեքել իւրաքանչիւր ¹⁷զգե-
րանդի իւր եւ զգործի իւր , եւ իւրա-
քանչիւր զփայտատ իւր եւ զմանգաղ իւր ։
21 Եւ էին կութք պատրաստ հնձելոյ , եւ
կահին երեք սիկղք էին՝ խոփոյ եւ կաց-
նոյ եւ մանգաղի յարդ հանգայն նմին"։
22 Եւ եղեւ յաւուրս պատերազմին ¹¹որ ի
Մաքմաս" եւ ոչ գտանէր սուսեր եւ
գեղարդն ի ձեռին ամենայն ժողովրդ-
եանն որ էին ընդ Սաւուղայ եւ ընդ
Յովնաթանու ¹¹որդւոյ նորա". եւ գտաւ
Սաւուղայ եւ Յովնաթանու որդւոյ նորա։
23 Եւ ել ¹⁸ի ճամբար այլազգեացն յայն-
կոյս Մաքմասայ . եւ հօր իւրում ոչ
եհան ի վեր ։"

¹Եբր· զպահակ այլազգեացն . այլ եւ նեխեցաւ Իսրայէլ յայլազգիսն, եւ խրախուսեաց ²Եբր· յարեւելից Բեթաւանայ ³Եբր· զի նեղեցաւ ժողովուրդն ⁴Եբր· յամուրս ⁵Եբր· յաշտարակս ⁶Եբր· Եբրայեցիքն անցին ընդ Յորդանան ⁷Եբր· երթայր երկիւղիւ զկնի նորա ։ (8) Եւ մնաց զաւուրս եւթն ըստ սահմանելոյն Սամուելի ⁸Եբր· Մատուցէք առ իս ⁹Եբր· ըստ ժամանակին սահմանելոյ ¹⁰Եբր· Անմտացար, ոչ պահեցեր զպատուիրանս Տեառն Աստուծոյ քո, զոր պատուիրեաց քեզ

¹¹Յեբր· պակասէ ¹²Եբր· ի բանակէ ¹³Եբր· դէմ եդեալ էր ¹⁴Եբր· յերկիրն ¹⁵Եբր· դէմ եդեալ էր ընդ ճանապարհն Բեթորոնայ ¹⁶Եբր· դէմ եդեալ էր ընդ ճանապարհ սահմանացն որ հայէր ի ձորն Սեբոյիմայ յանապատն կոյս ։ ¹⁷Եբր· զբրիչ իւր եւ զխոփ իւր, եւ զտապար իւր եւ զքաղհիւր (21) Եւ կէին նոցա խարտոցք ի թեքել զբրիչ եւ զխոփ եւ զերեքժանի եւ զտապար եւ զխթան ¹⁸Եբր· պահակ այլազգեացն ի կիրճ անդր Մաքմասա

## Գլ. ԺԴ

1 Եւ եղեւ օր, եւ ասէ Յովնաթան որդին Սաւ-
ուղայ ցպատանին ցկապարճակիրն իւր,
Եկ եւ անցցուք [1]ի կիրճս այլազգեացն
յայնկոյս". եւ հօր իւրում ոչ պատմեաց։
2 Եւ Սաւուղ նստէր ի գլուխ Բլրոյն ընդ
նռնենեաւն ի Մագդովղ. եւ էին ընդ
նմա իբրեւ վեց հարիւր այր ի ժողո-
3 վրրդեանէն։ Եւ Աքիա որդի Աքիտովբայ
եղբօր [2]Իքաբովդի, որդւոյ Փենեհեսի,
որդւոյ [3]Հեղեայ քահանայի Աստուծոյ
ի Սելով որ կրէր զեփուդն. եւ ժողո-
վուրդն ոչ գիտէր եթէ երթեալ իցէ
4 Յովնաթան։ Եւ ի մէջ կրճին ընդ որ
խնդրէր անցանել Յովնաթան ի ճամբար
այլազգեացն [4]ի կիրճս. եւ" քարաժայռք
յայսմ կողմանէ, եւ քարաժայռք յայնմ
կողմանէ, անուն միումն Բազէս, եւ
5 անուն միւսումն Սենա։ [5]Եւ ժայռ մի
ի հիւսիսոյ որ երթայր ընդ Մաքմաս,
եւ միւս եւս ժայռ՝ որ երթայր ի հա-
6 րաւոյ ի Գաբայէ"։ Եւ ասէ Յովնաթան
ցպատանին ցկապարճակիրն իւր, Եկ
անցցուք [6]ի կիրճս անթլփատիցն այնո-
ցիկ, թերեւս արասցէ ինչ մեզ Տէր. զի
ոչինչ է խափան Տեառն ապրեցուցանել
7 բազմօք կամ սակաւուք։ Եւ ասէ ցնա
կապարճակիրն իւր, Արա զամենայն ինչ
յոր եւ յօժարեսցէ սիրտ քո. ահաւասիկ
ես ընդ քեզ եմ. որպէս սիրտ քո՝ սիրտ
8 իմ։ Եւ ասէ Յովնաթան, Ահաւասիկ
մեք անցանեմք առ արսն, եւ [7]յափսի-
9 թերս երթիցուք առ նոսա". Եթէ ասի-
ցեն ցմեզ, Ի բաց կացէք այդր մինչեւ
[8]պատմեսցուք ինչ" ձեզ, զտեղի կալ-
10 ցուք եւ մի՛ ելցուք առ նոսա։ Ապա թէ
ասիցեն, Ելէք առ մեզ, ելցուք, զի
մատնեաց զնոսա Տէր ի ձեռս մեր. այս
11 լիցի մեզ նշանակ։ Եւ մտին երկոքեան
[6]ի կիրճս այլազգեացն. եւ ասեն այլ-
ազգիքն, Ահա Եբրայեցիքն ելանեն ի
ծակուց իւրեանց ուր թաքուցեալ էին։
12 Եւ պատասխանի ետուն արք [9]կրճայն
եւ ասեն ցՅովնաթան եւ ցկապարճա-
կիրն, Ելէք առ մեզ եւ ծանուսցուք
ձեզ բանս. եւ ասէ Յովնաթան ցկա-
պարճակիրն իւր, Եկ զկնի իմ, զի մատ-
13 նեաց զնոսա Տէր ի ձեռս Իսրայէլի։ Եւ
ել Յովնաթան յափսիթերս, եւ կապար-
ճակիրն նորա [10]ընդ նմա եւ հայեցան
ընդդէմ" Յովնաթանու, եւ [11]եհար զնո-
սա. եւ կապարճակիրն սպառ սատակ"
14 զհետ նորա։ Եւ եղեն առաջին հար-
ուածքն զոր եհար զնոսա Յովնաթան
եւ կապարճակիրն իւր՝ իբրեւ քսան ա-
րանց, [12]նետիւք եւ բանաքարամբք դաշ-
15 տին"։ Եւ եղեւ խռովութիւն յանդին,
ի բանակին, եւ [13]ամենայն ժողովուրդն
որ ի կիրճսն էին" եւ ապականիչքն զար-
հուրեցան, [14]եւ ոչ կամէին աշխատել". եւ
դղրդեցաւ երկիրն, եւ եղեւ ահ[15]ի Տեառնէ։
16 Եւ տեսին դէտքն Սաւուղայ ի Գաբաայ
Բենիամինի, եւ ահա խռովեալ էր բա-
17 նակն յայսկոյս յայնկոյս։ Եւ ասէ Սա-
ւուղ ցժողովուրդն որ ընդ նմա, Հան-
դէս արարէք եւ տեսէք ո՞վ երթեալ իցէ
ի մէնջ. եւ հանդէս արարին, եւ ոչ
գտանէր Յովնաթան եւ կապարճակիր
18 նորա։ Եւ ասէ Սաւուղ ցԱքիա, Մատո
[16]զեփուդդ. քանզի նա կրէր զեփուդն ."
զի էր տապանակն Աստուծոյ յաւուր
19 յայնմիկ առաջի Իսրայէլի։ Եւ եղեւ մինչ-
դեռ խօսէր Սաւուղ ընդ քահանային, եւ
աղաղակ ի բանակին այլազգեաց երթա-
լով երթայր եւ յաճախէր. եւ ասէ Սա-
ւուղ ցքահանայն, Ամփոփեա զձեռն քո։
20 Եւ ել Սաւուղ եւ ամենայն ժողովուրդն
որ ընդ նմա, եւ եկին մինչեւ ցպատե-
րազմն. եւ ահա եղեւ սուր առն ի վե-
րայ ընկերի իւրոյ, եւ աղմուկ մեծ յոյժ։
21 Եւ [17]ծառայքն որ էին ընդ այլազգիսն
յերէկն եւ յեռանդն՝ որ ելեալ էին ընդ
բանակին, դարձան անդրէն լինել ընդ
Իսրայէլի եւ ընդ Սաւուղայ եւ Յովնա-
22 թանու։ Եւ ամենայն Իսրայէլ որ թաքուց-
եալ էին ի լերինն Եփրեմի, իբրեւ լուան
եթէ փախեան այլազգիքն, խմբեցան եւ
23 նոքա եւս զհետ նոցա ի պատերազմ։ Եւ
փրկեաց Տէր յաւուր յայնմիկ զԻսրայէլ, եւ
պատերազմն դատեցաւ զԲեթաւանաւ։
24 [18]Եւ ամենայն ժողովուրդն էր ընդ Սա-

[1] Ոմն. ի պահակ այլազգեացն որ ի կրճին [2] Ոմն. Իքաբովթայ [3] Ոմն. Հեղեայ [4] Ոմն. գոյնոց [5] Ոմն. Մին ի ժայռից կայր ի հիւսիսոյ յանդիման Մաքմասայ, եւ միւսն ի հարաւոյ հանդէպ Գաբաայ [6] Ոմն. ի պահակ [7] Ոմն. յայտնեսցուք նոցա [8] Ոմն. պատասխանեսցուք [9] Ոմն. պահակին

[10] Ոմն. զհետ նորա, եւ անկան առաջի [11] Ոմն. կապարճակիր նորա սպանանէր [12] Ոմն. իբրեւ ի վերայ կիսոյ արտավարի գետնոյ [13] Ոմն. յամենայն ժողովրդեան. պահակն [14] Ոմն. նոքա եւս [15] Ոմն. յԱստուծոյ [16] Ոմն. զտապանակն Աստուծոյ [17] Ոմն. Եբրայեցիքն [18] Ոմն. Եւ այր Իսրայէլի տագնապեցաւ յաւուր յայնմիկ. եւ Սաւուղ երդմնեցոյց

ւուղայ իբրեւ տասն հազար արանց. եւ
էր պատերազմ ցրուեալ ընդ ամենայն
քաղաքսն ի լերինն Եփրեմի։ Եւ Սա-
ւուղ անգիտացաւ անգիտութիւն յաւուր
յայնմիկ, եւ նզովեաց" զժողովուրդն՝
եւ ասէ, Անիծեալ լիցի մարդն որ կե-
րիցէ հաց մինչեւ ցերեկոյ. եւ խնդրեցից
վրէժ ի թշնամեաց իմոց. եւ ոչ ճա-
25 շակեաց ամենայն ժողովուրդն հաց. Եւ
ամենայն [1]երկիրն ճաշէր. եւ անդ էր
26 անտառ մեղուաց հանդէպ անդրին"։ Եւ
եմուտ զօրն [2]ի մեղուանոցն, եւ ան-
ցանէին քրթմնջելով". եւ չէր ոք որ
դարձուցանէր զձեռն իւր ի բերան իւր.
քանզի երկեաւ ժողովուրդն յերդմանէն
27 [3]Տեառն։ Եւ Յովնաթանու չէր լուեալ
եթէ երդմնեցոյց հայր նորա զժողո-
վուրդն, եւ կարկառ զծայր գաւազանի
իւրոյ որ ի ձեռին իւրում, եւ եհար ի
խորիսխ մեղու. եւ դարձոյց զձեռն իւր
ի բերան իւր, եւ բացան աչք նորա։
28 Եւ պատասխանի ետ ոմն ի զօրուէ անտի
եւ ասէ, Երդմնեցուցանելով երդմնեցոյց
հայր քո զժողովուրդս եւ ասէ, Անիծ-
եալ լիցի այր որ կերիցէ հաց մինչեւ
29 ցերեկոյ։ Եւ լքաւ ժողովուրդն։ Եւ
[3]իբրեւ գիտաց" Յովնաթան ասէ, Կորոյս
հայր իմ զերկիրս. զի եթէ տեսին աչք
իմ, վասն զի ճաշակեցի սակաւ մի ի
30 մեղուէս յայսմանէ. Եթէ ուտելով կե-
րեալ էր այսօր ժողովրդեանն յաւարէ
թշնամեաց իւրեանց զոր գտին, մեծա-
մեծ հարուածս առնէին յայլազգիսն։
31 Եւ [4]եհար յաւուր յայնմիկ յայլազգ-
եացն [5]ի Մաքմաս. եւ աշխատեցաւ ժո-
32 ղովուրդն յոյժ։ Եւ յարձակեցաւ ժողո-
վուրդն յաւարն. եւ առ ժողովուրդն
զհօտս եւ զանդեայս եւ զծնունդս ար-
ջառոց, եւ սպանանէր ի վերայ երկրի,
եւ ուտէր ժողովուրդն հանդերձ արեամբն։
33 Ազդ եղեւ Սաւուղայ եւ ասեն, թէ Մե-
ղաւ ժողովուրդն Տեառն. զի կերան
արեամբ հանդերձ. եւ ասէ Սաւուղ,
[6]ի Գեթթայիմ անօրինեցայք". թաւա-
34 լեցուցէք ինձ այսր վէմ մի մեծ։ Եւ ասէ
Սաւուղ, Սփռեցայք ընդ ժողովուրդդ
եւ ասացէք ցդոսա մատուցանել այսր
զիւրաքանչիւր արջառ իւր եւ զիւրա-
քանչիւր ոչխար իւր, եւ սպանէք ի վե-
րայ դորա եւ կերայք զդոսա. եւ մի՛
մեղանչէք Տեառն ուտելով հանդերձ
արեամբ։ Եւ մատոյց ժողովուրդն իւ-
րաքանչիւր [7]որ ի ձեռին իւրում" զցայգն,
35 եւ սպանանէին անդ։ Եւ շինեաց անդ
Սաւուղ սեղան Տեառն. զայն նախ
սկսաւ Սաւուղ շինել սեղան Տեառն։
36 Եւ ասէ Սաւուղ, Իջցուք զհետ այլ-
ազգեացն զցայգս եւ յափշտակեսցուք
ի նոցանէն մինչեւ լուսանալ օր, եւ մի՛
թողցուք ի նոցանէ այր. եւ ասեն ցնա,
Զամենայն զոր ինչ հաճոյ թուի առաջի
աչաց քոց՝ արա։ Ասէ քահանայն, Մա-
37 տիցուք աստ առ Աստուած։ Եւ եհարց
Սաւուղ զԱստուած, Իջցո՞ւք զհետ այլ-
ազգեացն, եթէ մատնեսցե՞ս զնոսա ի
ձեռս Իսրայելի։ Եւ ոչ արար նմա պա-
38 տասխանի Տէր յաւուր յայնմիկ։ Եւ ասէ
Սաւուղ, [8]Մատուցէք այսր զամենայն
ազգս Իսրայելի", եւ գիտասջիք եւ տես-
ջիք թէ վասն ո՞յր եղեն այսօր մեղքս
39 այսոքիկ։ Զի կենդանի է Տէր որ փրկեաց
զԻսրայէլ, եթէ զՅովնաթանայ որդ-
ւոյ իմոյ տացէ պատասխանի, մահու
մեռցի. եւ ոչ ոք էր որ տայր պատաս-
40 խանի յամենայն ժողովրդենէն։ Եւ ասէ
ցամենայն այր Իսրայելի, Դուք լինիջիք
ի մի կողմն, եւ ես եւ Յովնաթան որդի
իմ եղիցուք ի մի կողմն. եւ ասէ ժո-
ղովուրդն ցՍաւուղ, Որ ինչ հաճոյ իցէ
41 առաջի աչաց քոց՝ արա։ Եւ ասէ Սա-
ւուղ, Տէր Աստուած Իսրայելի, [9]զի՞ է
զի ոչ ետուր պատասխանի ծառայի քում
յաւուր յայսմիկ. եթէ յիս իցեն այսօր
եւ եթէ ի Յովնաթան յորդի իմ անօրէ-
նութիւնք, տուր յայտնութիւն եւ եթէ ի
ժողովրդեան քում Իսրայելի իցէ անի-
րաւութիւն՝ տուր քաւութիւն։ Եւ ար-
կին վիճակս Յովնաթանու եւ Սաւուղայ".
42 եւ ել ժողովուրդն արտաքս։ Եւ ասէ
Սաւուղ, Արկէք վիճակ ընդ իս եւ ընդ
Յովնաթան որդի իմ. [3]եւ որում հանցէ
Տէր զվիճակն՝ մեռցի։ Եւ ասէ ժողո-
վուրդն ցՍաւուղ, Մի՛ լիցի բանդ այդ։
Եւ ստիպեաց Սաւուղ զժողովուրդն, եւ
արկին ընդ նա եւ ընդ Յովնաթան որդի

[1] Եբր. երկիրն, ուրիշք՝ ժողովուրդն, եկն յան-տառն, եւ էր մեղր ընդ երեսս դաշտին [2] Եբր. յանտառն, եւ ահա գնայր մեղր [3] Յեբր. պակաս է [4] Եբր. հարին [5] Եբր. ի Մաքմասայ յԱյեղոն [6] Ի Գեթթայիմ, յԵբրայականէն՝ Պըկատթեմ, Նշանակէ անօրինեցայք.

[7] Եբր. զարջառ իւր [8] Եբր. Մատերուք այսր ամենայն իշխանք ժողովրդեանն [9] Եբր. յայտնեա զարդարութիւն. եւ ըմբռնեցաւ Յովնաթան և Սաւուղ

նորա՛: եւ ել վիճակն Յովնաթանու:
43 Եւ ասէ Սաւուղ ցՅովնաթան, Պատմեա
ինձ զի՞նչ արարեր. եւ պատմեաց նմա
Յովնաթան եւ ասէ, Ճաշակելով ճաշա-
կեցի ծայրիւ գաւազանին որ ի ձեռին
իմում անկաւ մի մեղր, եւ ահա մեռա-
44 նիմ ես: Եւ ասէ ցնա Սաւուղ, Օն եւ
օն արասցէ ինձ Աստուած եւ օն եւ օն
յաւելցէ, եթէ ոչ մահու մեռանիցիս
45 [1]այսօր: Եւ ասէ ժողովուրդն ցՍաւուղ,
Թէ լիցի եթէ մեռանիցի [1]այսօր, որ
արար զփրկութիւնս զայս մեծ Իսրայէլի.
կենդանի է Տէր եթէ անկցի ի հերաց
գլխոյ նորա յերկիր. զի [2]ժողովուրդս
Աստուծոյ արար զմեղս զայսօրիկ: Եւ
եկաց ժողովուրդն յաղօթս առ Տէր վասն
Յովնաթանու յաւուր յայնմիկ՝, եւ ոչ
46 մեռաւ: Եւ դարձաւ Սաւուղ յայլազգ-
եացն, եւ այլազգիքն գնացին ի տեղիս
իւրեանց:
47 Եւ եհաս Սաւուղայ թագաւորել, [3]եւ
վիճակեցաւ՝ ի վերայ Իսրայէլի. եւ տայր
պատերազմ շուրջ ընդ ամենայն թշնա-
միս իւր, ընդ Մովաբու եւ ընդ որ-
դիսն Ամոնայ եւ ընդ որդիսն Եդովմայ
[3]եւ ընդ Բեթթայրայ՝ եւ ընդ թագաւորին
Սուբայ եւ ընդ այլազգին. եւ ուր շրջէր՝
48 փրկէր: Եւ առնէր զօրութիւնս տասնիւ.
եւ եհար զԱմաղէկ, եւ ապրեցոյց զԻս-
րայէլ ի ձեռաց կոխողաց նորա:
49 Եւ էին որդիք Սաւուղայ Յովնաթան
եւ Յեսուի եւ Մելքիսուէ. եւ անուանք
երկուց դստերաց նորա, անուն անդրան-
կանն Մերովբ, եւ անուն երկրորդին
50 Մեղքող: Եւ անուն կնոջ նորա Աքի-
նոամ դուստր Աքիմաասայ. եւ անուն զօ-
րավարին նորա Աբեններ, որդի Ներեայ
51 որդւոյ [4]ընտանւոյ Սաւուղայ: Եւ Կիս՝
հայր Սաւուղայ, եւ Ներ՝ հայր Աբեններ-
այ, [5]որդիք Յամինայ որդւոյ Աբիելի՝
52 երեսուն եւ ութ՝: Եւ էր պատերազմ
սաստիկ ընդ այլազգիսն զամենայն աւուրս
Սաւուղայ. եւ տեսեալ Սաւուղայ զա-
մենայն զօրաւոր եւ զամենայն որդի
զօրութեան, ժողովեաց զնոսա առ ինքն:

Գլ. ԺԵ

1 Եւ ասէ Սամուէլ ցՍաւուղ, Զիս ա-
ռաքեաց Տէր օծանել զքեզ ի թագաւոր
ի վերայ ժողովրդեան իւրոյ Իսրայէլի.
եւ արդ լուր ձայնի պատգամաց Տեառն:
2 Այսպէս ասէ Տէր զօրութեանց. Արդ
խնդրեցից զվրէժ, զոր արար Ամաղէկ
ընդ Իսրայէլի. զիա՛րդ պատահեաց նմա
ի ճանապարհի ելանելոյ նորա յԵգիպ-
3 տոսէ: Եւ արդ երթ եւ հարցես զԱմա-
ղէկ եւ [6]զՅարիմ եւ՝ զամենայն որ ինչ
նորա իցէ. եւ մի՛ ապրեցուցանիցես ի
նոցանէ, եւ սատակեսցես զնա եւ կո-
րուսցես յանէ մինչեւ ցկին եւ ի տղայոյ
մինչեւ ցստնդիացն, եւ յարջառոյ մինչեւ
ցոչխար եւ յուղտուէ մինչեւ ցէշ:
4 Եւ հրաման ետ Սաւուղ ժողովրդեանն,
եւ հանդէս արար նոցա [7]յԱզիմ, չորեք
հարեւր հազար զօրականաց, եւ երե-
սուն հազարաց զօրականաց՝ Յուդայ:
5 Եւ եկն Սաւուղ մինչեւ ցքաղաքն Ամա-
ղեկայ, եւ դարանամուտ եղեւ ի հե-
6 ղեղատին: Եւ ասէ Սաւուղ ցԿինեցին,
Երթ խոյս տուր ի միջոյ Ամաղեկացւոյն,
զի մի՛ սատակեցից զքեզ ընդ նմա. եւ
դու արարեր ողորմութիւն ընդ ամե-
նայն որդիսն Իսրայէլի յելանելն նոցա
յԵգիպտոսէ. եւ խոյս ետ Կինեցին ի մի-
7 ջոյ Ամաղեկայ: Եւ եհար Սաւուղ զԱ-
մաղէկ յԵւիլատայ մինչեւ ի Սուր, որ է
8 հանդէպ Եգիպտոսի. Եւ կալաւ զԹա-
գաւորն Ամաղեկայ զԱգագ կենդանւոյն,
եւ զամենայն ազգն [3]Յարիմայ կոտորե-
9 ցին սրով սուսերի: Եւ ապրեցոյց Սա-
ւուղ եւ [3]ամենայն ժողովուրդն զԱգագ
[3]կենդանի, եւ զընտիրս խաշանց եւ
զանդեայց եւ [8]զկերակրոց եւ զայգեաց
եւ զամենայն բարութեանց՝, եւ ոչ կա-
մեցաւ սատակել զնոսա. եւ զամենայն
գործ զանարգ եւ զարհամարհեալ սա-
տակեցին:
10 Եւ եղեւ բան Տեառն առ Սամուէլ եւ
11 ասէ, Զղջացեալ եմ զի թագաւորեցուցի
զՍաւուղ ի թագաւոր. զի դարձաւ յինէն
յետս, եւ զբանս իմ ոչ պահեաց: Եւ
տրտմեցաւ Սամուէլ, եւ գոչեաց Սա-
12 մուէլ առ Տէր զգիշերն ամենայն: Եւ
կանխեաց Սամուէլ եւ գնաց ընդ առաջ
[9]Իսրայէլի ընդ առաւօտն. եւ ազդ ե-
ղեւ Սամուէլի եւ ասեն, Եկն Սաւուղ

---

[1] Եբր. Յովնաթան [2] Եբր. Աստուծով արար յաղթութիւն յաւուր յայնմիկ: Եւ փրկեաց ժողովուրդն զՅովնաթան [3] Եբր. պակաս [4] Եբր. հօրեղբօր [5] Եբր. որդի Աբիելի

[6] Եբր. Կենեցիս [7] Եբր. ի Տելայիմ, երկերիւր հազար հետեւակաց, եւ տասն հազար արանց [8] Եբր. զպարարտս, եւ զգառինս եւ զամենայն բարութիւնս [9] Եբր. Սաւուղայ

ի Կարմեղոս եւ կանգնեաց իւր ձեռն, եւ
[1]դարձոյց զկառսն" եւ էջ ի Գաղգաղա։
13 Եւ եկն Սամուէլ առ Սաւուղ. [2]եւ ահա
նա մատուցանէր ողջակէզս Տեառն զա-
ռաջինս աւարացն զոր ած յԱմաղեկայ։
Եւ եկն Սամուէլ առ Սաւուղ." եւ ասէ
ցնա Սաւուղ, Օրհնեալ դու ի Տեառնէ.
14 կատարեցի զոր ինչ խօսեցաւ Տէր։ Եւ
ասէ Սամուէլ, Եւ զի՞նչ է բարբառ հօ-
տիցդ այդոցիկ յականջս իմ, եւ բար-
15 բառ արջառոցդ զոր ես լսեմ։ Եւ ասէ
Սաւուղ, ՅԱմաղեկայ ածին զայդ զոր
ապրեցոյց ժողովուրդդ, զընտիրս խո-
չանց եւ զարջառոց, զի զոհեսցեն Տեառն
Աստուծոյ քում. եւ զայլսն [3]սատակեցի։
16 Եւ ասէ Սամուէլ ցՍաւուղ, Ակաց եւ
պատմեցից քեզ զոր խօսեցաւ Տէր ընդ
իս յայսմ գիշերի։ Եւ ասէ ցնա, Խօս-
17 եաց։ Եւ ասէ Սամուէլ ցՍաւուղ, Ո՞չ ա-
պաքէն փոքր [4]էիր դու առաջի նորա զօրա-
վար գաւազանի ցեղին" Իսրայելի, եւ
օծ զքեզ Տէր թագաւոր ի վերայ Իս-
18 րայելի. Եւ առաքեաց զքեզ Տէր ի ճա-
նապարհ, եւ ասէ ցքեզ, Երթ եւ սա-
տակեա զմեղանչականսն յիս զԱմաղէկ.
եւ տացես ընդ նոսա պատերազմ մին-
19 չեւ վախճանեսցես զնոսա. Եւ ընդէ՞ր
ոչ լուար ձայնի Տեառն, այլ յարձակե-
ցար գիմել ի վերայ աւարին, եւ արա-
20 րեր չար առաջի Տեառն։ Եւ ասէ Սա-
ւուղ ցՍամուէլ, [5]Վասն լսելոյ իմոյ
ձայնի ժողովրդեանն". եւ չոգայ ի ճա-
նապարհն զոր առաքեաց զիս Տէր, եւ
ածի զԱգագ արքայ Ամաղեկայ, եւ զԱ-
21 մաղէկ սատակեցի։ Եւ առ ժողովուրդս
յաւարէ անտի հօտս եւ անդեայս զըն-
տիրս սատակմանն՝ [6]առաջի Տեառն Աս-
22 տուծոյ զոհել" ի Գաղգաղա։ Եւ ասէ
Սամուէլ, Եթէ հաճո՞յ իցէ Տեառն ող-
ջակէզ եւ զոհ իբրեւ լսել ձայնի Տեառն.
ահա լաւ է ունկնդրութիւն քան զզոհ
ընտիր, եւ հնազանդութիւն քան զճարպ
23 խոյոց։ Զի [7]հմայք մեղք են, եւ ցաւս
եւ աշխատութիւնս ածէ թերափիմ ի վե-
րայ". զի արհամարհեցեր զբան Տեառն,
արհամարհեսցէ զքեզ Տէր չլինել թա-
գաւոր [2]ի վերայ Իսրայելի"։

[1]Եբր. դարձաւ եւ անց [2]Եբր. գօխաւ [3]Եբր. սատակեցաք [4]Եբր. էիր դու յաչս քո, եղեր գլուխ ցեղիցն [5]Եբր. Լուայ ձայնի Տեառն [6]Եբր. զոհել Տեառն Աստուծոյ քում [7]Եբր. մեղք հմայից՝ ապստամբութիւն, եւ ատութիւն եւ թերափիմ՝ անսաստութիւն

24 Եւ ասէ Սաւուղ ցՍամուէլ, Մեղայ
զի անցի զբանիւ Տեառն եւ զբանիւ
քով, զի երկեայ ի ժողովրդենէն եւ լուայ
25 ձայնի նոցա։ Եւ արդ բարձ զմեղս իմ,
եւ դարձիր ընդ իս, եւ պագից երկիր
26 Տեառն Աստուծոյ քում։ Եւ ասէ Սա-
մուէլ ցՍաւուղ, Ոչ դարձայց ընդ քեզ.
զի արհամարհեցեր զբանն Տեառն, եւ
արհամարհեսցէ զքեզ Տէր չլինել թա-
27 գաւոր ի վերայ Իսրայելի։ Եւ դարձոյց
Սամուէլ զերեսս իւր ի գնալ, եւ բուռն
եհար Սաւուղ զծագաց կրկնոցի նորա եւ
28 [8]պատառեաց զնա"։ Եւ ասէ ցնա Սա-
մուէլ, Պատառեաց Տէր զթագաւորու-
թիւնդ ի ձեռաց քոց յԻսրայելէ այսօր,
եւ տացէ զդա ընկերի քում լաւագունի
29 քան զքեզ։ [9]Եւ բաժանեսցի Իսրայէլ
ընդ երկու. եւ ոչ դարձցի եւ ոչ զղջասցի
Տէր." զի ոչ եթէ իբրեւ զմարդ է ի
30 զղջանալ. [2]ինքնին սպառնացի" Եւ ասէ
Սաւուղ, Մեղայ. այլ մեծարեա զիս ա-
ռաջի ծերոց ժողովրդեանն իմոյ, եւ ա-
ռաջի Իսրայելի. եւ դարձիր ընդ իս,
եւ երկիր պագից Տեառն Աստուծոյ քում։
31 Եւ դարձաւ Սամուէլ զկնի Սաւուղայ,
եւ երկիր եպագ [10]Տեառն։
32 Եւ ասէ Սամուէլ, Մատուցէք առ իս
զԱգագ թագաւորն Ամաղեկայ. եւ մատ-
եաւ առ նա Ագագ [11]դողալով. եւ ասէ
Ագագ, [12]Եթէ այսպէս դառն իցէ մահ"։
33 Եւ ասէ Սամուէլ ցԱգագ, Զոր օրինակ
որբեկատար արար սուր քո զկանայս,
նոյնպէս որբեկատար լիցի ի կանանց
մայր քո։ Եւ [13]սպան Սամուէլ զԱգագ
առաջի Տեառն ի Գաղգաղա։
34 Եւ գնաց Սամուէլ յԱրիմաթեմ, եւ
35 Սաւուղ ել ի տուն իւր ի Գաբաա։ Եւ
ոչ եւս յաւել Սամուէլ տեսանել զՍա-
ւուղ մինչեւ յօր մահուան իւրոյ. զի
սուգ ունէր Սամուէլ ի վերայ Սաւու-
ղայ. եւ զղջացաւ Տէր զի թագաւորե-
ցոյց զՍաւուղ ի վերայ Իսրայելի։

## ԳԼ. ԺԶ

1 Եւ ասէ Տէր ցՍամուէլ, Մինչեւ յե՞րբ
սուգ առնես ի վերայ Սաւուղայ. եւ
ես անարգեցի զնա չթագաւորել ի վե-

[8]Եբր. պատառեցաւ [9]Եբր. Զի Ապաւէնն Իսրայելի ոչ ստեսցէ եւ ոչ զղջասցի [10]Եբր. Սաւուղ Տեառն [11]Եբր. փափկութեամբ [12]Եբր. Արդարեւ անց դառնութիւն մահու [13]Եբր. յօշեաց

*րայ Իսրայէլի. լից զեղջեւր քո իւղով,
եւ եկ առաքեմ զքեզ առ Յեսսէ [1]մինչեւ
ցԲեթղեհեմ”. զի տեսի ես յորդւոցն նո-
2 րա թագաւորել ինձ ի թագաւոր: Եւ
ասէ Սամուէլ, Զիա՞րդ երթայց. եւ լուիցէ
Սաւուղ եւ սպանանիցէ զիս: Եւ ասէ
Տէր, առ դու ընդ քեզ երինջ մի յարջառոց.
3 եւ ասասցես՝ զոհել Տեառն եկի. Եւ
կոչեսցես զՅեսսէ ի զոհն. եւ ցուցից
քեզ զինչ առնիցես. եւ օծցես զոր ես
ասացից քեզ:
4 Եւ արար Սամուէլ զամենայն զոր խօ-
սեցաւ ընդ նմա Տէր, եւ եկն ի Բեթ-
ղեհեմ: Եւ զարհուրեցան ծերք քաղա-
քին ի պատահել նմա, եւ ասեն, Խա-
ղաղութի՞ւն իցէ մուտ քո, [2]տեսանօղ:
5 Եւ ասէ, Խաղաղութիւն է. զոհել Տեառն
եկի. սրբեցարուք եւ [3]ուրախ լերուք
ընդ իս այսօր”. եւ սրբեաց զՅեսսէ եւ
զորդիս նորա, եւ կոչեաց զնոսա ի
6 զոհն: Եւ եղեւ ի մտանելն նոցա ետես
զԵղիաբ եւ ասէ, Այլ եւ առաջի իսկ
7 Տեառն օծեալ իւր: Եւ ասէ Տէր ցՍա-
մուէլ, Մի՛ հայիր ընդ տեսիլ դորա, եւ
մի՛ ի մեծութիւն հասակի դորա, զի ա-
նարգեցի զդա. զի ոչ եթէ որպէս տե-
սանիցէ մարդ՝ [2]տեսանէ Աստուած”.
զի մարդ հայի յերեսս, եւ [4]Աստուած
8 հայի ի սիրտ: Եւ կոչեաց Յեսսէ զԱմի-
նադաբ, եւ անց առաջի Սամուէլի. եւ
9 ասէ, Եւ ոչ զդա ընտրեաց Տէր: Եւ
անցոյց Յեսսէ զՍամմա. եւ ասէ, Եւ ոչ
10 զդա ընտրեաց Տէր: Եւ անցոյց Յեսսէ
զեւթանեսին զորդիսն իւր առաջի Սա-
մուէլի. եւ ասէ Սամուէլ ցՅեսսէ, Ոչ
11 ընտրեաց ի դոցանէ Տէր: Եւ ասէ Սա-
մուէլ ցՅեսսէ, Ա՞յդչափ են մանկտիդ:
Եւ ասէ, Կայ միւս եւս փոքրիկ եւ ա-
րածէ խաշն: Եւ ասէ Սամուէլ ցՅեսսէ,
Առաքեա եւ ած զնա. զի ոչ բազմես-
12 ցուք մինչեւ ի գալ նորա այսր: Եւ ա-
ռաքեաց եւ ած զնա. եւ նա էր կար-
միր եւ աչօք գեղեցիկ եւ բարեօք տե-
սանելով [2]Տեառն: Եւ ասէ Տէր ցՍա-
մուէլ, Արի օծ [5]զԴաւիթ, զի դա է
13 [2]բարի: Եւ ա՛ռ Սամուէլ զեղջեւրն իւ-
ղոյ, եւ օծ զնա ի մէջ եղբարց իւրոց.
եւ խաղաց Հոգի Տեառն ի վերայ Դաւթի
յօրէ յայնմանէ եւ առ յապա. եւ յար-
եաւ Սամուէլ եւ գնաց յԱրիմաթեմ:*

[1]Եբր. Բեթղեհեմացի [2]Յեբր. պակաս [3]Եբր. եկայք ընդ իս ի զոհն [4]Եբր. Տէր [5]Եբր. զդա

*14 Եւ Հոգի Տեառն վերացաւ ի Սաւու-
ղայ, եւ խեղդէր զնա այս չար ի Տեառնէ:
15 Եւ ասեն ցնա ծառայքն իւր, Ահա այս
16 չար [6]ի Տեառնէ խեղդէ զքեզ. [7]Խօսեսցին
ծառայք քո առաջի քո, եւ խնդրեսցեն
տեառն մերում” այր մի որ գիտիցէ եր-
գել քնարաւ. եւ եղիցի ի հասանել ի
վերայ քո այսոյն չարի որ յԱստուծոյ՝
երգեսցէ քնարաւն, եւ զեւր լիցի քեզ
17 եւ հանգուսցէ զքեզ: Եւ ասէ Սաւուղ
ցծառայսն իւր, Տեսէք ինձ այր մի որ
բարւոք երգիցէ, եւ ածէք զնա առ իս:
18 Պատասխանի ետ մի ոմն ի մանկտւոյ
նորա եւ ասէ, Ահա տեսի զորդի Յես-
սեայ զԲեթղեհեմացի, եւ գիտէ սաղ-
մոս, եւ այր իմաստուն եւ այր պա-
տերազմօղ, եւ այր հանճարեղ եւ ճար-
տարաբան, եւ այր գեղեցիկ տեսլեամբ,
19 եւ Տէր ընդ նմա: Եւ առաքեաց Սաւուղ
հրեշտակս առ Յեսսէ, եւ ասէ, Առաքեա
առ իս զԴաւիթ որդի քո որ ի հօտի
20 քում է: Եւ ա՛ռ Յեսսէ [8]արդու մի հացի”
եւ տիկ մի գինւոյ եւ ուլ մի այծեաց,
եւ առաքեաց ի ձեռն Դաւթի որդւոյ
21 իւրոյ՝ Սաւուղայ: Եւ եմուտ Դաւիթ
առ Սաւուղ, եւ կայր ի սպասու առա-
ջի նորա. եւ սիրեաց զնա յոյժ, եւ ե-
22 ղեւ նորա կապարճակիր: Եւ առաքեաց
Սաւուղ առ Յեսսէ եւ ասէ, Կացցէ
Դաւիթ առաջի իմ, զի եգիտ շնորհս ա-
23 ռաջի աչաց իմոց: Եւ լինէր յորժամ
հասանէր այսն չար ի վերայ Սաւուղայ,
առնոյր Դաւիթ զքնարն եւ նուագէր
ձեռամբ իւրով, եւ հանգուցանէր զՍա-
ւուղ, եւ զիւրանայր նմա, եւ մեկնէր ի
նմանէ այսն չար:*

## ԳԼ. ԺԷ

*1 Եւ ժողովեցին այլազգիքն զբանակս
իւրեանց ի պատերազմ, եւ գումարե-
ցան ի Սոկքով Հրէաստանի. եւ բանա-
կեցան ընդ Սոկքով եւ ընդ Ազեկա յԱ-
2 փեսդոմին: Եւ Սաւուղ եւ արք Իսրա-
յելի ժողովեցան եւ [9]նոքա ի հովիտն”,
եւ ճակատեցան ի պատերազմ ընդդէմ այլ-
3 ազգեացն: Եւ այլազգիքն կային ի վերայ
լերինն յայնմ կողմանէ, եւ Իսրայէլ կայր
ի վերայ լերինն յայսմ կողմանէ, եւ հո-
4 վիտն ի մէջ նոցա: Եւ ել այր զօրա-*

[6]Եբր. յԱստուծոյ [7]Եբր. Արդ խօսեսցի տէր մեր ծառայից իւրոց առաջի իւր. խնդրեսցեն [8]Եբր. էշ բարձեալ հաց [9]Եբր. բանակեցան ի հովտին Էղայ, այսինքն՝ Կաղնւոյն

ւոր ի ճակատէ այլազգեացն, Գողիադ
անուն նորա ի Գեթայ. բարձրութիւն
5 նորա վեց կանգուն եւ թզաւ, Եւ [1]սա-
ղաւարտ ի գլուխ նորա, եւ զրահս վերտա
զգեցեալ. եւ կշիռ զրահից նորա հինգ
6 հազար սիկղ պղնձոյ [2]եւ երկաթոյ"։ Եւ
ոտնապանք պղնձիք ի վերայ բարձից
նորա, եւ վահան պղնձի ի վերայ թի-
7 կանց նորա։ Եւ բուն գեղարդեան նորա
իբրեւ զոտորի ոստայնանկաց, եւ տէգ
նորա ի վեց հարիւր սիկղէ երկաթոյ.
եւ զինակիր նորա առաջի նորա երթայր։
8 Եկն եկաց, ձայն ետ ի ճակատն Իսրա-
յելի եւ ասէ ցնոսա, Ընդէ՞ր ելանէք ճա-
կատել ի պատերազմ [2]ընդդէմ մեր". ո՞չ
ապաքէն ես այլազգի եմ, եւ դուք [2]Եբ-
րայեցիք՝ ծառայք Սաւուղայ. ընտրեցէք
9 դուք ձեզ այր մի, եւ իջցէ առ իս. Եթէ
կարասցէ կռուել ընդ իս եւ հարկանել
զիս, եղիցուք մեք ձեզ ի ծառայս. ապա
թէ ես յաղթեցից եւ հարից զնա, ե-
ղիջիք դուք մեզ ի ծառայս եւ ծառա-
10 յեսջիք մեզ։ Եւ ասէ այլազգին, Ահա-
ւասիկ ես նախատեցի զճակատ Իսրա-
յելի յաւուր յայսմիկ. տուք այր մի,
եւ ես եւ նա մենամարտեսցուք երկոք-
11 եան։ Իբրեւ լուաւ Սաւուղ եւ ամենայն
Իսրայէլ զբանս այլազգւոյն, զարհու-
րան եւ երկեան յոյժ։
12 Եւ էր այր մի որդի առն Եփրաթաց-
ւոյ, եւ նա ի Բեթղեհեմէ Յուդայ, եւ
անուն նորա Յեսսէ. եւ էին նորա որ-
դիք ութ. եւ այրն յաւուրս Սաւուղայ
13 ծերացեալ հասեալ յարս։ Եւ գնացին ե-
րեք որդիքն Յեսսեայ մեծագոյնք՝ երթ-
եալ զհետ Սաւուղայ ի պատերազմ. եւ
անուանք որդւոց նորա երթելոց ի պա-
տերազմ, Եղիաբ անդրանիկ նորա, եւ
երկրորդ նորա Աբինադաբ, եւ երրորդ
14 նորա Սամաա. Եւ Դաւիթ էր կրսեր,
եւ երեքին մեծագոյնքն երթեալ էին
15 զհետ Սաւուղայ։ Եւ Դաւիթ գնացեալ
դարձաւ ի Սաւուղայ արածել զոչխարս
16 հօր իւրոյ ի Բեթղեհեմ։ Եւ մատուցեալ
այլազգւոյն՝ կանխեալ եւ անագանեալ
արձանանայր աւուրս քառասուն։
17 Եւ ասէ Յեսսէ ցԴաւիթ ցորդի իւր,
Առ դու եղբարց քոց զարդաւ փոխնդոյս
այսորիկ, եւ զտասն նկանակս զայսոսիկ,
եւ պնդեա ի բանակն եւ տուր եղբարց
18 քոց։ Եւ զտասն մաճառակս կաթին

[1] Եբր. սաղաւարտ պղնձի [2] Եբր. դ—ք—ե

տայցես հազարապետին. եւ տեսցես
զողջոյն եղբարց քոց, եւ [3]եթէ պէտք
19 ինչ իցեն նոցա, իմասցիս"։ Եւ Սաւուղ
եւ ամենայն այր Իսրայելացի էին ի հո-
վիտս Կաղնւոյն, պատերազմեալ ընդ
այլազգիսն։
20 Եւ կանխեաց Դաւիթ ընդ առաւօտն,
եւ եթող զոչխարսն ի տուարածականն,
առ եւ գնաց որպէս եւ հրամայեաց նմա
Յեսսէ. եւ եկն [4]ի տափարակն եւ ի զօրն
որ ելանէր ի ճակատն, եւ աղաղակեցին
21 ի պատերազմին, Եւ ճակատեցան Իսրա-
յելացիքն եւ այլազգիքն հանդէպ մի-
22 մեանց ճակատ առ ճակատ։ Եւ եթող
Դաւիթ զկարասին յինքենէ ի ձեռն պա-
հապանին, եւ ընթացաւ ի ճակատն, եւ
եկն եհարց զողջոյնէ եղբարցն իւրոց։
23 Եւ մինչդեռ նա խօսէր, ահա այրն [5]Յա-
մինացի ելանէր, Գողիադ անուն նորա,
Փղշտացի ի Գեթայ՝ ի ճակատուց այլազգ-
եացն, եւ խօսեցաւ ըստ նմին բանից,
24 եւ լուաւ Դաւիթ։ Եւ ամենայն Իսրայէլ
ի տեսանել իւրեանց զայրն՝ փախեան յե-
րեսաց նորա, եւ զարհուրեցան յոյժ։
25 Եւ ասէ այր Իսրայելի, Եթէ Տեսանէ՞ք
զայրն զայն որ ելանէ, զի նախատել
ելանէ զԻսրայէլ. եւ եղիցի այր որ սպա-
նանիցէ զնա, մեծացուսցէ զնա արքայ
յոյժ մեծութեամբ, եւ զդուստր իւր
տացէ նմա կնութեան, եւ զտուն հօր
նորա արասցէ ազատ ի մէջ Իսրայելի։
26 Եւ խօսեցաւ Դաւիթ ընդ արսն որ շուրջ
կային զնովաւ եւ ասէ, Զի՞նչ առնիցի
առն որ հարկանիցէ զայլազգին զայն,
եւ բառնայցէ զնախատինս յԻսրայելէ.
զի զի՞նչ է այլազգին այն անթլփատ, զի
նախատեաց զճակատս Աստուծոյ կեն-
27 դանւոյ։ Եւ խօսեցաւ ընդ նմա ժողո-
վուրդն ըստ նմին բանից եւ ասէ, Այն-
պէս արասցի առն՝ որ սպանանիցէ զնա։
28 Իբրեւ լուաւ Եղիաբ եղբայր նորա ե-
րէց զխօսել նորա ընդ արսն, բարկացաւ
սրտմտութեամբ Եղիաբ Դաւթի եւ ա-
սէ, Ընդէ՞ր իջեր այսր, եւ յո՞յր
ձեռն թողեր զսակաւ ոչխարսն յա-
նապատի անդ. ես գիտեմ զհպարտու-
թիւն քո եւ զչարութիւն սրտի քո, զի
վասն տեսանելոյ զպատերազմս իջեր։
29 Եւ ասէ Դաւիթ, Եւ արդ զի՞նչ արարի.
30 ո՞չ ապաքէն բանք իցեն։ Եւ դարձաւ ի

[3] Եբր. զգրաւ նոցա առցես [4] Եբր. ի տեղին կա-
ռաց [5] Եբր. ախոյեան

նմանէ ի միւս կողմն եւ խօսեցաւ ըստ
նմին բանից. եւ ետ նմա պատասխանի
ժողովուրդն ըստ առաջնոյ բանիցն։
31 Եւ լուեալն բանքն զոր խօսեցաւ
Դաւիթ, եւ պատմեցին առաջի Սաւուղայ,
32 եւ ած զնա առ ինքն։ Եւ ասէ Դաւիթ
ցՍաւուղ, Մի՛ անկցի սիրտ [1]տեառն
իմոյ" ի վերայ իւր. ծառայ քո երթիցէ
եւ մարտիցէ ընդ այլազգւոյն ընդ այնմիկ։
33 Եւ ասէ Սաւուղ ցԴաւիթ, Դուցէ ոչ
կարիցես երթալ կռուել ընդ այլազգւոյն.
զի դու մանուկ ես, եւ նա այր պատե-
34 րազմող ի մանկութենէ իւրմէ։ Եւ ասէ
Դաւիթ ցՍաւուղ, Արածէր ծառայ քո
զխաշինս հօր իւրոյ, եւ յորժամ գայր
առեւծ կամ արջ եւ առնոյր ոչխար ի
35 հօտէ անտի, Ելանէի զհետ նորա եւ
հարկանէի զնա, եւ կորզէի ի բերանոյ
նորա. եւ եթէ յառնէր ի վերայ իմ,
ունէի զփողից նորա եւ հարկանէի եւ
36 սպանանէի զնա։ Զառեւծ եւ զարջ
սատակէր ծառայ քո. եւ եղիցի այլազ-
գին անթլփատ իբրեւ զմի ի նոցանէն.
[2]եւ արդ ո՞չ երթայց սատակեցից զնա,
եւ բարձից այսօր զնախատինս յԻսրա-
յելէ, զի ո՞ ոք է այն անթլփատ որ"
նախատեաց զբանակս Աստուծոյ կեն-
37 դանւոյ։ Եւ ասէ Դաւիթ, Տէր [3]Աս-
տուած որ ապրեցոյց զիս ի ձեռաց ա-
ռիւծուն, եւ ի ձեռաց արջոյն, նոյն
ապրեցուսցէ զիս ի ձեռաց այլազգւոյն
[3]անթլփատին այնորիկ։ Եւ ասէ Սաւուղ,
38 Երթ, եւ Տէր եղիցի ընդ քեզ։ Եւ զգե-
ցոյց Սաւուղ Դաւթի զփառապանակս
իւր, եւ սաղաւարտ պղնձի ի գլուխ
39 նորա, եւ ագոյց նմա զրահս։ Եւ ած
Դաւթի զսուսեր իւր ի վերայ վառապա-
նակացն. եւ [4]գթեաց ի գնալն մի ան-
գամ եւ երկիցս", եւ ասէ Դաւիթ ցՍա-
ւուղ, Ոչ կարեմ երթալ սոքօք, զի
չեմ հմուտ. եւ [5]հանին զայն ի նմանէ"։
40 Եւ առ զգաւազան իւր ի ձեռին իւրում,
եւ ընտրեաց իւր հինգ քարինս ողորկս
ի հեղեղատէն, եւ եդ զնոսա ի հովուա-
կան մախաղին [3]յոր սովոր էր դքարն
ժողովել", եւ զպարսն ի ձեռին իւրում.
41 եւ մերձեցաւ առ այրն այլազգի։ Եւ
գնայր գայր այլազգին եւ մերձենայր առ
Դաւիթ. եւ այր վահանակիր առաջի
42 նորա։ Իբրեւ հայեցաւ այլազգին եւ ե-
տես զԴաւիթ, արհամարհեաց զնա. զի
էր պատանեակ, խարտեաշ եւ [6]աչօք գե-
43 ղեցիկ"։ Եւ ասէ այլազգին ցԴաւիթ,
Զի՞րդ. չո՞ւն եմ ես զի ցպով [7]եւ քա-
րամբք գաս ի վերայ իմ. եւ ասէ Դաւիթ,
Ոչ, այլ վատթար եւս քան զշուն"։
Եւ նզովեաց այլազգին զԴաւիթ զիօքն
44 իւրովք։ Եւ ասէ այլազգին ցԴաւիթ,
Եկ առ իս եւ տաց զմարմին քո թռչնոց
45 երկնից եւ գազանաց երկրի։ Եւ ասէ
Դաւիթ ցայլազգին, Դու գաս ի վերայ
իմ սրով եւ գեղարդեամբ եւ ասպարաւ,
եւ ես գամ ի վերայ քո անուամբ Տեառն
զօրութեանց [8]ճակատուս Իսրայելի զոր
46 նախատեցեր [3]այսօր։ Եւ փակեսցէ զքեզ
Տէր այսօր ի ձեռս իմ, եւ սպանից զքեզ,
եւ առից զգլուխ քո ի քէն. եւ տաց
[3]զզէշ քո եւ" զզիակունս բանակի այլ-
ազգեացդ յաւուր յայսմիկ թռչնոց երկ-
նից եւ գազանաց երկրի. եւ ծանիցէ ա-
մենայն երկիր եթէ գոյ Աստուած ի մէջ
47 Իսրայելի. Եւ ծանիցէ ամենայն եկեղե-
ցիս այս թէ ոչ սրով եւ գեղարդեամբ
փրկէ Տէր. զի Տեառն է պատերազմ,
եւ մատնեսցէ զձեզ Տէր ի ձեռս մեր։
48 Եւ յարեաւ այլազգին եւ եկն եւ մեր-
ձեցաւ ընդդէմ Դաւթի. եւ աճապար-
եաց Դաւիթ եւ ընթացաւ ի ճակատն
49 ընդդէմ այլազգւոյն։ Եւ ձգեաց Դաւիթ
զձեռն իւր ի մախաղն, եւ առ անտի
քար մի, եւ պարսաքարեաց եւ եհար
զճակատ այլազգւոյն. եւ եմուտ քարն
[3]ընդ սաղաւարտն" ի ճակատն, եւ ան-
50 կաւ ի վերայ երեսաց իւրոց յերկիր։ Եւ
զօրացաւ Դաւիթ քան զայլազգին պար-
սիւքն եւ քարիւն, եւ եհար զայլազգին
եւ սպան զնա. եւ սուր չէր ի ձեռին
51 [9]նորա։ Եւ ընթացաւ Դաւիթ եւ հարաւ
ի վերայ նորա, եւ առ զնորին սուսեր,
եւ մերկեաց զնա ի պատենից իւրոց, եւ
սպան զնա եւ [10]եհատ զգլուխ նորա։
Իբրեւ տեսին այլազգիքն թէ մեռաւ
52 զօրաւորն նոցա, փախեան։ Եւ յարեան
արք Իսրայելի եւ Յուդայ, աղաղակեցին
եւ յարձակեցան զհետ նոցա մինչեւ [11]ի
մուտս Գեթայ" եւ մինչեւ ի դրունս
Ակկարոնի. եւ անկան վիրաւորք այլազ-

[1] Եբր. մարդոյ [2] Եբր. զի [3] Եբր. [illegible] [4] Եբր. կամեցաւ գնալ, զի չէր վարժ. [5] Եբր. հան զնոսա յինքենէ

[6] Եբր. միանգամայն գեղեցիկ ի տեսանել [7] Եբր. գաս ի վերայ իմ [8] Եբր. Աստուծոյ ճակատուց [9] Եբր. Դաւթի. [10] Եբր. եհատ նովաւ [11] Եբր. ի մուտս հովտին

գեացն ¹զճանապարհայնն մինչեւ ցդրունս
53 Գեթայ եւ Ակկարոնի՞։ Եւ դարձան արք
Իսրայելի ասպատակեալքն զհետ այլ-
ազգեացն, եւ կոխեցին զբանակս նոցա։
54 Եւ առ Դաւիթ զգլուխ այլազգւոյն, եւ
եբեր զնա յԵրուսաղէմ. եւ զզէն նորա
եդ ի վրանս իւրում։
55 Եւ իբրեւ ետես Սաւուղ զԴաւիթ ել-
եալ ընդդէմ այլազգւոյն, ասէ ցԱբեն-
նէր իշխան զօրուն, Ո՞յր որդի է պա-
տանեակդ այդ, Աբեններ. եւ ասէ Աբեն-
նէր, Կենդանի է անձն քո, արքայ, թէ
56 գիտիցեմ։ Եւ ասէ արքայ, Հարց թէ
57 ո՞յր որդի իցէ պատանեակդ։ Եւ իբրեւ
դարձաւ Դաւիթ ի հարկանելոյ զայլազ-
գին, առ զնա Աբեններ եւ ած զնա ա-
ռաջի Սաւուղայ. եւ գլուխ այլազգւոյն
58 ի ձեռին նորա։ Եւ ասէ ցնա Սաւուղ,
Ո՞յր որդի ես, մանուկ դու։ Եւ ասէ
Դաւիթ, Որդի ծառայի քո Յեսսեայ
Բեթղեհեմացւոյ։

## ԳԼ. ԺԸ

1 Եւ եղեւ իբրեւ վախճանեաց զխօսելն
ընդ Սաւուղայ, եւ ոգի Յովնաթանու
կապեցաւ ընդ ոգւոյն Դաւթի, եւ սի-
րեաց զնա Յովնաթան ըստ անձին իւ-
2 րում։ Եւ առ զնա Սաւուղ առ իւր յա-
ւուր յայնմիկ, եւ ոչ ետ նմա դառնալ
3 ի տուն հօր իւրոյ։ Եւ ուխտեաց ընդ նմա
Յովնաթան ուխտ առ ի սիրել զնա ըստ
4 անձին իւրում։ Եւ մերկացաւ Յովնա-
թան զվերարկուն որ զիւրեւ եւ ետ զայն
Դաւթի, եւ զվարապանակս իւր՝ մին-
չեւ ցսուսեր իւր եւ ցաղեղն իւր եւ ցկա-
5 մար իւր։ Եւ երթայր Դաւիթ ամենայն
ուրեք ուր եւ առաքէր զնա Սաւուղ,
եւ իմաստնանայր. եւ կացոյց զնա Սա-
ւուղ ի վերայ արանց պատերազմի. եւ
հաճոյ եղեւ առաջի աչաց ամենայն ժո-
ղովրդեանն, նա եւ առաջի աչաց ծա-
ռայիցն Սաւուղայ։
6 Եւ եղեւ ի մտանելն նոցա իբրեւ դար-
ձաւ Դաւիթ ի սպանանելոյ զայլազգին,
ելին ²պարաւորք ընդ առաջ Դաւթի՞ յա-
մենայն քաղաքացն Իսրայելի երգել, պար
առնուլ ընդ առաջ Սաւուղայ արքայի
թմբկօք եւ ուրախութեամբ եւ ծնծղա-
7 յիւք։ Եւ նուագէին կանայք խաղալիկք
եւ ասէին, Եհար Սաւուղ զհազարս, եւ
8 Դաւիթ զբեւրս։ Եւ չարեցաւ Սաւուղ
վասն բանին այնորիկ. եւ ասէ, Դաւթի
ետուն զբեւրս, եւ ինձ ետուն զհազարս.
եւ արդ զի՞նչ պակաս է նմա, բայց եթէ
9 թագաւորութիւնն։ Եւ ընդ ակամբ հա-
յէր Սաւուղ³ յօրէ յայնմանէ եւ առ յապա։
10 Եւ եղեւ ի վաղիւ անդր եւ հարաւ ոգի
չար յԱստուծոյ ի վերայ Սաւուղայ, եւ
մարգարէանայր ի մէջ տան իւրոյ, եւ
Դաւիթ երգէր ձեռամբ իւրով որպէս
եւ հանապազ. եւ գեղարդն ի ձե-
11 ռին Սաւուղայ։ ⁴Եւ ասէ, Հարից կա-
րեցից զԴաւիթ ⁵զեղարդեամբս ընդ որմն։
Եւ ձգեաց Սաւուղ՞, եւ խոյս ետ յերե-
12 սաց նորա Դաւիթ երկիցս։ Եւ երկեաւ
Սաւուղ յերեսաց Դաւթի, զի Տէր էր ընդ
13 նմա, եւ ի Սաւուղայ մերժեալ էր։ Եւ
ի բաց արար զնա Սաւուղ յիւրմէ, եւ
կացոյց զնա իւր հազարապետ, եւ ելա-
նէր եւ մտանէր առաջի ժողովրդեանն։
14 Եւ էր Դաւիթ խելամուտ յամենայն ճա-
15 նապարհս իւր, եւ Տէր ընդ նմա։ Եւ ե-
տես Սաւուղ թէ այնչափ իմաստուն է
16 յոյժ, ակնածէր յերեսաց նորա։ Եւ ա-
մենայն Իսրայէլ եւ Յուդա սիրէր զԴա-
ւիթ, զի նա ելանէր եւ մտանէր առա-
ջի երեսաց ժողովրդեանն։
17 Եւ ասէ Սաւուղ ցԴաւիթ, Ահա դուստր
իմ երէց Մերոբ, տաց զնա քեզ կնու-
թեան. բայց լեր դու ինձ յորդի զօրու-
թեան, եւ պատերազմեա զպատերազ-
մունս Տեառն. քանզի ասաց Սաւուղ,
Մի եղիցի ձեռն իմ ի նա, այլ եղիցի ի
18 նա ձեռն այլազգեացն։ Եւ ասէ Դաւիթ
ցՍաւուղ, Ո՞վ եմ ես եւ կամ կեանք ազ-
գատոհմի հօր իմոյ ի մէջ Իսրայելի, զի
19 լինիցիմ փեսայ արքայի։ Եւ եղեւ ի ժա-
մանակի տալոյ զՄերոբ դուստր Սաւու-
ղայ՝ Դաւթի, տուաւ նա Եզրիելի Մո-
ղաթացւոյ կնութեան։
20 Եւ սիրեաց Մեղքող՝ դուստր Սաւու-
ղայ՝ զԴաւիթ. եւ ազդ եղեւ Սաւու-
ղայ, եւ հաճոյ թուեցաւ բանն յաչս նո-
21 րա։ Եւ ասէ Սաւուղ, Տաց զնա նմա
կնութեան, եւ եղիցի նմա ի գայթակ-
ղութիւն. եւ ⁶էր ի վերայ Սաւուղայ՞
ձեռն այլազգեացն։ Եւ ասէ Սաւուղ
ցԴաւիթ, Երկոքումբք փեսայանայցես դու
22 ինձ այսօր։ Եւ պատուիրեաց Սաւուղ

¹Եբր. ի ճանապարհին Սագարիմայ, եւ մինչեւ ի Գէթ եւ յԱկկարոն  ²Եբր. կանայք

³Եբր. յաւելու, Դաւթի Սաւուղ զգեղարդն, եւ  ⁴Եբր. Եւ ձգեաց  ⁵Եբր. ընդ որմն  ⁶Եբր. եղիցի ի վերայ նորա

ծառայից իւրոց եւ ասէ, Խօսեցարուք
դուք լռելեայն ընդ Դաւթի եւ ասացէք,
Ահա արքայ հաճեալ է ընդ քեզ, եւ ա-
մենայն արք նորա սիրեն զքեզ. եւ արդ
23 փեսայացիր դու արքայի: Եւ խօսեցան
ծառայքն Սաւուղայ յականջս Դաւթի
ըստ ամենայն բանիցս այսոցիկ. եւ ա-
սէ Դաւիթ, Թեթեւ իցէ յաչս ձեր փե-
սայանալ արքայի. եւ ես այր մի տա-
24 ռապեալ եմ, եւ ոչ փառաւոր: Եւ պատ-
մեցին Սաւուղի ծառայքն իւր ըստ բանիցս
25 այսոցիկ զոր խօսեցաւ Դաւիթ: Եւ ասէ
Սաւուղ, Այսպէս ասասջիք ցԴաւիթ,
եթէ Ոչ կամի արքայ վարձանս, այլ հա-
րեւր անթլփատութիւն այլազգեաց, առ-
նուլ վրէժ ի թշնամեաց արքայի. եւ Սա-
ւուղ խորհէր արկանել զնա ի ձեռս այլ-
26 ազգեացն: Եւ պատմեցին Դաւթի ծա-
ռայքն Սաւուղայ զբանս զայսոսիկ. եւ
հաճոյ թուեցաւ բանն յաչս Դաւթի փե-
սայանալ արքայի. եւ չէին լցեալ ա-
27 ւուրք, Եւ յարեաւ Դաւիթ եւ գնաց ինքն
եւ արք իւր, եւ եհար յայլազգեացն այս
[1]հարեւր, եւ երեր զանթլփատութիւնս
նոցա եւ եդից զնոսա առաջի արքայի, [2]եւ
փեսայացաւ" արքայի. եւ ետ Սաւուղ
զՄեղքող դուստր իւր նմա կնութեան:
28 Եւ տեսեալ Սաւուղ եւ ծանեաւ եթէ Տէր
է ընդ նմա, եւ [3]ամենայն Իսրայէլ" սի-
29 րէր զնա, Եւ յաւել եւս[4] ակնածել ի
Դաւթէ. եւ եղեւ Սաւուղ թշնամու-
թեամբ ընդ Դաւթի զամենայն աւուրս:
30 Եւ ելին իշխանք այլազգեացն, եւ [5]ե-
ղեն ի բազում ժամանակաց ելք" նոցա,
խելամուտ էր Դաւիթ քան զամենայն
ծառայսն Սաւուղայ, եւ պատուեցաւ
անուն նորա յոյժ:

ԳԼ. ԺԹ

1 Եւ խօսեցաւ Սաւուղ ընդ Յովնաթա-
նայ որդւոյ իւրում, եւ ընդ ամենայն
2 ծառայս իւր սպանանել զԴաւիթ: Եւ
Յովնաթան որդի Սաւուղայ հաճեալ էր
ընդ Դաւիթ յոյժ. եւ պատմեաց Յովնա-
թան Դաւթի եւ ասէ, Հայր [6]իմ խնդրէ
սպանանել զքեզ. զգոյշ լեր վաղիւ ընդ
առաւօտն, եւ թաքիջիր եւ նստիջիր ի
3 թաքստեան. Եւ ես ելից եւ կացից մօտ
առ հօր իմում յանդին, ուր եւ իցես դու
անդ, եւ ես խօսեցայց վասն քո ընդ հօր
իմում, եւ տեսից եթէ զինչ իցէ եւ
4 պատմեցից քեզ: Եւ խօսեցաւ Յովնա-
թան վասն Դաւթի բանս բարիս ընդ Սա-
ւուղայ հօր իւրում, եւ ասէ ցնա, Մի
մեղիցէ արքայ ի ծառայ իւր Դաւիթ, զի
ոչինչ մեղաւ նա քեզ. եւ գործք նորա
5 բարութեամբ են առ քեզ յոյժ: Եւ եդ
զանձն իւր ի ձեռին իւրում, եւ եհար
զայլազգին. եւ արար Տէր փրկութիւն
[7]մեծ, եւ ամենայն Իսրայէլ տեսին եւ
ուրախ եղեն". եւ ընդէ՞ր մեղանչիցես
յարիւն արդար սպանանել զԴաւիթ տա-
6 րապարտուց: Եւ լուաւ Սաւուղ ձայնի
Յովնաթանու, եւ երդուաւ Սաւուղ եւ
ասէ, Կենդանի է Տէր եթէ մեռանիցի:
7 Եւ կոչեաց Յովնաթան զԴաւիթ, եւ
պատմեաց նմա Յովնաթան զամենայն
բանս զայսոսիկ. եւ տարաւ Յովնաթան
զԴաւիթ առ Սաւուղ, եւ էր առաջի
նորա իբրեւ յերէկն եւ յեռանդ:
8 Եւ յաւել եւս լինել պատերազմ, եւ
զօրացաւ Դաւիթ տալ պատերազմ ընդ
այլազգիսն, եւ եհար ի նոցանէ հարուածս
մեծամեծս յոյժ. եւ փախեան յերեսաց
9 նորա: Եւ եղեւ այս չար ի Տեառնէ ի
վերայ Սաւուղայ, եւ ինքն նստէր ի
տան, եւ գեղարդն ի ձեռին նորա, եւ
10 Դաւիթ երգէր ձեռօք իւրովք: Եւ խնդրէր
Սաւուղ հարկանել զգեղարդնն ընդ Դա-
ւիթ եւ ընդ որմն. եւ խուսեաց յերե-
սաց Սաւուղայ. եւ եհար զգեղարդն
յորմն, եւ Դաւիթ ել գնաց եւ [8]զերծաւ:
11 Եւ եղեւ ի գիշերին յայնմիկ" առաքեաց
Սաւուղ հրեշտակս ի տուն Դաւթի պա-
հել զնա, զի սպանցէ զնա ընդ առա-
ւօտն: Եւ պատմեաց Դաւթի Մեղքող
կին իւր եւ ասէ, Եթէ ոչ ապրեցուս-
ցես զանձն քո ի գիշերիս յայսմիկ, վա-
12 ղիւ մեռանելոց ես: Եւ իջոյց Մեղքող
զԴաւիթ ընդ պատուհանն, եւ փախեաւ
13 գնաց եւ ապրեաց: Եւ ա՛ռ Մեղքող պա-
ճուճապատանս եւ եդ ի վերայ մահճացն,
[9]եւ լեարդ այծեաց" եւ կծիկ մազոյ եդ
ի սնարէ, եւ ծածկեաց զնա հանդերձիւ:
14 Եւ առաքեաց հրեշտակս Սաւուղ ունել
15 զԴաւիթ. եւ [10]ասեն թէ Խօթ է: Եւ ա-
ռաքեաց [11]ի վերայ Դաւթի դարձեալ" եւ

[1]Եբր. երկերիւր [2]Եբր. զի փեսայասցի [3]Եբր. Մեղքող, դուստր Սաւուղայ, [4]Եբր. [illegible] Սաւուղ [5]Եբր. լինէր յելանել [6]Եբր. իմ Սաւուղ

[7]Եբր. մեծ ամենայն Իսրայելի, տեսեր դու եւ ու-
րախ եղեր [8]Եբր. զերծաւ ի գիշերին յայնմիկ:
(11)Եւ [9]Յեբր. [illegible] [10]Եբր. ասէ կինն
[11]Եբր. Սաւուղ հրեշտակս տեսանել զԴաւիթ,

ասէ, Հանէք զնա մահճօքն առ իս եւ
16 սպանից զնա։ Եւ եկին հրեշտակքն, եւ
ահա պաճուճապատանքն ի վերայ մահ-
ճացն, [1]եւ լեարդ այծեաց" եւ կծիկ մա-
17 զոյ ի սնարսն։ Եւ ասէ Սաւուղ ցՄեղքող.
Ընդէ՞ր այսպէս խաբեցեր զիս, եւ արձա-
կեցեր զթշնամին իմ եւ ապրեցաւ. եւ ասէ
Մեղքող ցՍաւուղ, Ինքն ասաց թէ արձակ-
եա զիս, ապա թէ ոչ՝ սպանանեմ զքեզ։
18 Եւ Դաւիթ փախեաւ եւ ապրեցաւ,
եւ եկն առ Սամուէլ յԱրիմաթեմ, եւ պատ-
մեաց նմա զամենայն ինչ զոր արար նմա
Սաւուղ։ Եւ գնացին Սամուէլ եւ Դա-
19 ւիթ եւ նստան ի Նաւաթ [1]Հռամայ։ Ազդ
եղեւ Սաւուղայ եւ ասեն, Ահա Դաւիթ
20 ի Նաւաթ Հռամայ է։ Եւ առաքեաց
Սաւուղ հրեշտակս ունել զԴաւիթ. եւ
տեսին զեկեղեցին մարգարէից մարգա-
րէացելոց, եւ Սամուէլ կայր ի վերայ
նոցա. եւ եղեւ ի վերայ հրեշտակացն
Սաւուղայ Հոգի Աստուծոյ, եւ մարգա-
21 րէացան եւ նոքա։ Եւ պատմեցաւ Սա-
ւուղայ. եւ յաւել Սաւուղ առաքել այլ
հրեշտակս, եւ մարգարէացան եւ նոքա։
Եւ յաւել Սաւուղ առաքել այլ հրեշտակս,
22 եւ մարգարէացան եւ նոքա։ Եւ [1]բար-
կացաւ սրտմտութեամբ Սաւուղ, եւ"
գնաց ինքն յԱրիմաթեմ, եւ եկն մին-
չեւ ի Ջրհորն մեծ որ ի Սոկքով, եւ ե-
հարց եւ ասէ, Ո՞ւր է Սամուէլ եւ Դա-
ւիթ։ Եւ ասեն, Ի Նաւաթ Հռամայ է։
23 Եւ գնաց անտի ի Նաւաթ Հռամայ. եւ
եղեւ ի վերայ նորա Հոգի Աստուծոյ,
եւ երթայր երթալով եւ մարգարէանայր,
մինչեւ հասանել նմա ի Նաւաթ Հռա-
24 մայ։ Եւ մերկացաւ զհանդերձ իւր ինք-
նին, եւ մարգարէացաւ առաջի [2]նոցա.
եւ անկաւ մերկ զտիւն ողջոյն եւ զգի-
շերն ամենայն. վասն այնորիկ ասէին
թէ Եւ Սաւո՞ւղ ի մարգարէս։

Գլ. Ի

1 Եւ փախեաւ Դաւիթ ի Նաւաթայ Հռա-
մայ. եւ եկն խօսեցաւ առաջի Յովնա-
թանայ եւ ասէ, Զի՞նչ արարի, եւ զի՞նչ
վնաս է իմ, եւ զի՞նչ մեղայ առաջի հօր
2 քո զի խնդրէ զանձն իմ։ Եւ ասէ ցնա
Յովնաթան, Քաւ քեզ, ոչ մեռանիցիս.
զի ահա ոչ առնէ հայր իմ բան մի մեծ
կամ փոքր զոր ոչ յայտնէ յունկն իմ. եւ զի-
՞արդ իցէ զի թաքուցանիցէ հայր իմ յի-

[1] Եբր. Ռամա [2] Եբր. Սամուէլի

3 նէն զբանդ զայդ. չէ այդպէս։ [3]Պատաս-
խանի ետ Դաւիթ եւ ասէ ցՅովնաթան",
Գիտելով գիտէ հայր քո զի գտի շնորհս
առաջի աչաց քոց, եւ ասէ թէ Մի գի-
տասցէ Յովնաթան, գուցէ [4]ոչ կամիցի".
այլ կենդանի է Տէր եւ կենդանի է անձն
քո, զի [5]որպէս ասացի՝ վճարեալ է ընդ
4 իս եւ ընդ հայր քո մինչեւ ցմահ"։ Եւ
ասէ Յովնաթան ցԴաւիթ, Զի՞նչ ցան-
5 կայ անձն քո՝ եւ արարից քեզ։ Ասէ
Դաւիթ ցՅովնաթան, Ահա վաղիւ ամ-
սամուտ է. եւ ես նստելով ո՛չ նստայց
ուտել հաց ընդ արքայի. եւ առաքես-
ցես զիս եւ թաքեայց ի դաշտի առս
6 մինչեւ ցընդերեկս աւուրն երրորդի. Ե-
թէ առնելով առնիցէ այց զինէն հայր
քո, [6]ասասցես եթէ Հրաժարելով հրա-
ժարեաց" յինէն Դաւիթ երթալ մինչեւ
ցԲեթղեհեմ քաղաք իւր. զի զոհ աւուրց
7 է անդ ամենայն ցեղին։ Եթէ ասասցէ
թէ Բարւոք է, խաղաղութիւն է ծա-
ռայի քում. ապա թէ խստիւ տացէ
պատասխանի, գիտասջիր զի վճարեալ
8 է չարութիւն առ ի նմանէ։ Եւ արաս-
ցես ողորմութիւն ընդ ծառայի քում.
զի յուխտ Տեառն մուծեր զծառայ քո
ընդ քեզ. եւ եթէ վնաս ինչ է [7]ծառայի
քում", դու իսկ սպան զիս. եւ ընդէ՞ր
9 հասուցանիցես զիս առ հայր քո։ Եւ ա-
սէ Յովնաթան, Քաւ լիցի քեզ. զի ե-
թէ գիտելով գիտացից եթէ վճարեալ է
չարութիւն առ ի հօրէ իմմէ գալ ի վե-
րայ քո՝ եթէ ոչ [1]ի քաղաքն իսկ քո"
10 պատմեցից քեզ։ Եւ ասէ Դաւիթ ցՅով-
նաթան, Ո՞ պատմեսցէ ինձ եթէ խստիւ
11 պատասխանի տացէ քեզ հայր քո։ Եւ
ասէ Յովնաթան ցԴաւիթ, [8]Երթ եւ մնա
յանդին". եւ գնացին երկոքեան յանդն։
12 Եւ ասէ Յովնաթան ցԴաւիթ, Տէր
Աստուած Իսրայելի գիտէ եթէ ոչ քննե-
ցից զհայր իմ [9]զերեք ժամանն". եւ ե-
թէ բարի ինչ իցէ զԴաւթէ եւ եթէ չար,
13 առաքեցից առ քեզ [10]յանդս. Օն եւ օն
արասցէ Տէր Յովնաթանու, եւ օն եւ
օն յաւելցէ, եթէ [11]ոչ քննեցից զչարու-
թիւնն" վասն քո, եւ յայտնեցից յունկն

[3] Եբր. Նա երդուաւ եւս Դաւիթ եւ ասէ [4] Եբր. վշտանայցէ [5] Եբր. քայլ մի է ի մէջ իմ և ի մէջ մահու [6] Եբր. յայնժամ ասասցես, Խնդրելով խնդրեաց [7] Եբր. յիս [8] Եբր. եկ եւ ելցուք յանդն [9] Եբր. ի ժամանակիս վաղիւ. կամ յերրորդումն [10] Եբր. և յայտնեցից յունկն քո [11] Եբր. բարւոք թուեսցի հօր իմում չարութիւն

քո, եւ արձակեցից զքեզ եւ երթիցես
ի խաղաղութիւն, եւ եղիցի Տէր ընդ
14 քեզ՝ որպէս էր ընդ հօր իմում։ Եւ իցէ
թէ մինչդեռ ես կենդանի իցեմ, արասցես ընդ իս խաղաղութիւն. [1]եւ եթէ
15 մահու՛ մեռանիցիմ, Եւ մի բարձցես
զողորմութիւն քո ի տանէ իմմէ մինչեւ
յաւիտեան. եւ եթէ ոչ, ի ջնջել Տեառն
զթշնամիս Դաւթի զիւրաքանչիւր որ
16 յերեսաց երկրէ. [2]Գտցի անուն Յովնա-
թանու ի տան Դաւթի՛, Խնդրեսցէ Տէր
17 ի ձեռաց թշնամեաց Դաւթի։ Եւ յաւել
Յովնաթան երդմնեցուցանել զԴաւիթ
առ սէր նորա. զի [3]սիրեաց զանձն սի-
18 րելւոյն իւրոյ՛։ Եւ ասէ ցնա Յովնա-
թան, Վաղիւ ամսամուտ է, եւ խնդրես-
19 ցիս. քանզի խնդրեսցի աթոռ քո։ Եւ
երեքօրեայն [4]եւ խնդրեսցիս՛ եւ եկես-
ցես ի տեղի քո՝ ուր թաքեարն յաւուրն
գործոյ. եւ նստջիս առ [5]երգաբաւդ
20 այդուիկ՛։ Եւ ես երեքկնեցից փքնօք
21 [6]յորս՝ ածել եւ ձգել յամաստարայն՛։ Եւ
արձակեցից զպատանեակն, եւ ասացից,
Երթ, գիտ զփքինն. եւ եթէ ասելով ա-
սացից ցպատանեակն, Ի քէն եւ այսր է
փքինն եւ այսր առ զնա, եկեսջիր, զի
խաղաղութիւն է քեզ, եւ չէն ինչ բանք,
22 կենդանի է Տէր. Ապա թէ ասացից ցպա-
տանին, Ի քէն եւ անդր է փքինն, գնասջիր,
23 զի արձակեաց զքեզ Տէր։ Եւ բանիցս զոր
խօսեցաք ես եւ դու, ահա Տէր լիցի վկայ
ընդ իս եւ ընդ քեզ մինչեւ յաւիտեան։
24 Եւ թաքեաւ Դաւիթ յանդին. եւ եհաս
ամսամուտն, եւ եմուտ արքայ ի սե-
25 նեակն ուտել հաց։ Եւ նստաւ արքայ
յաթոռ իւրում, որպէս միանգամն եւ
միւսանգամ աթոռոյ յորմայեցն. եւ [7]ժա-
մանեաց Յովնաթան, եւ նստաւ Աբեն-
ներ ի կողմանէ Սաւուղայ, եւ խնդրե-
26 ցաւ տեղին Դաւթի։ Եւ ոչ խօսեցաւ
Սաւուղ եւ ոչ ինչ յաւուր յայնմիկ. քան-
զի ասաց թէ Դէպք ինչ իցեն չլինելոյ
27 սուրբ, եւ չիցէ սրբեալ։ Եւ եղեւ ի
վաղիւ ամսամտին յաւուրն երկրորդի
խնդրեցաւ տեղին Դաւթի. եւ ասէ Սա-
ւուղ ցՅովնաթան զորդի իւր, Զի՞ է զի
ոչ եկն որդին Յեսսեայ երէկ եւ այսօր
28 ի սեղանս։ Պատասխանի ետ Յովնաթան
եւ ասէ ցՍաւուղ, [8]Հրաժարեաց յինէն
29 երթալ ի Բեթղեհեմ [9]քաղաք իւր՛. Ա-
սէ, Արձակեա զիս, զի զոհ է ցեղին մե-
րոյ ի քաղաքին, եւ [10]պատուիրեցին ցիս
եղբարք՛ իմ. եւ արդ եթէ գտի շնորհս
առաջի աչաց քոց, երթայց տեսից զեղ-
բարս իմ. վասն այնորիկ ոչ եկն ի սե-
30 ղան արքային։ Եւ բարկացաւ Սաւուղ ի վե-
րայ Յովնաթանու եւ ասէ ցնա, Աղճկորդի
անձնամատն, ես ո՞չ գիտեմ, զի դաշնաւոր
ես դու որդւոյն Յեսսեայ՝ յամօթ քո եւ
31 յամօթ առականաց մօր քո. Զի զամե-
նայն աւուրս որչափ որդին Յեսսեայ
կենդանի [11]է, ոչ հաստատեսցի՛ թագա-
ւորութիւն քո. արդ առաքեա կալ զպա-
32 տանին, զի որդի մահու է նա։ Պատաս-
խանի ետ Յովնաթան Սաւուղայ հօր իւ-
րում, եւ ասէ ցնա, Ընդէ՞ր մեռանիցի.
33 զի՞նչ գործեաց։ Եւ վերացոյց Սաւուղ
զգեղարդն ի վերայ Յովնաթանու սպանա-
նել զնա. եւ գիտաց Յովնաթան թէ
վճարեալ է չարութիւն ի հօրէ նորա
34 սպանանել զԴաւիթ։ Եւ դիմեաց Յով-
նաթան ի սեղանոյ անտի արտաքս բար-
կութեամբ եւ սրտմտութեամբ. եւ ոչ
եկեր յաւուրն երկրորդի ամսոյն հաց,
զի բեկաւ վասն Դաւթի, զի [12]վճարեաց
վասն նորա՛ հայրն իւր։
35 Եւ եղեւ ընդ առաւօտն ել Յովնա-
թան յանդն, որպէս ժամադիր եղեւ Դաւ-
թի [9]ի վկայութիւն. եւ մանուկ փոք-
36 րիկ ընդ նմա։ Եւ ասէ ցպատանեակն,
Ընթա, գիտ զփքինն զոր ձգեցից. եւ
ընթացաւ պատանեակն. եւ նա ձգեաց
37 զփքինն, եւ [13]երեր զնա։ Եւ չոգաւ պա-
տանեակն մինչեւ ցտեղի փքնին զոր ձգեաց
Յովնաթան. եւ աղաղակեաց Յովնաթան
զկնի պատանեկին եւ ասէ, Ի քէն եւ անդր
38 է փքինն։ Եւ աղաղակեաց Յովնաթան
զկնի պատանեկին եւ ասէ, Փութացեալ
արագեա եւ մի կայցես։ Եւ քաղեաց
մանուկն Յովնաթանու զփքինսն եւ ե-
39 բեր առ տէր իւր։ Եւ պատանեակն ոչ
ինչ գիտէր բաց ի Յովնաթանայ եւ ի
40 Դաւթէ, զի գիտէին զբանն։ Եւ ետ Յով-
նաթան զգործին իւր ցպատանեակն, եւ
ասէ ցպատանեակն իւր, Երթ մուտ ի
41 քաղաքն։ Եւ եմուտ պատանեակն. եւ

[1] Եբր. զի մի [2] Եբր. Եւ ուխտեաց Յովնաթան ընդ տանն Դաւթի եւ ասէ [3] Եբր. զսէր անձին իւրոյ սիրեաց զնա [4] Եբր. իջցես վաղվաղակի, [5] Եբր. վիմին Եզէլ [6] Եբր. յայն կոյս իբրեւ ի նպատակ [7] Եբր. յարեաւ

[8] Եբր. Խնդրելով խնդրեաց Դաւիթ [9] Եբր. դաշտն [10] Եբր. պատուիրեաց ինձ եղբայր [11] Եբր. է յերկրի, ոչ հաստատեսցիս դու եւ ոչ [12] Եբր. թշնամանեաց զնա [13] Եբր. անցոյց անդր քան

յարեաւ Դաւիթ [1]յԱրգաբայն, եւ անկաւ
ի վերայ երեսաց իւրոց յերկիր, եւ եր-
կիր եպագ նմա երիցս անգամ, եւ համ-
բուրեաց իւրաքանչիւր զընկեր իւր, եւ
ելաց իւրաքանչիւր ի վերայ ընկերի իւ-
42 րոյ մինչեւ [2]զմեծ վախճան": Եւ ասէ
Յովնաթան ցԴաւիթ, Երթ ի խաղաղու-
թիւն. եւ որպէս երդուաք մեք երկո-
քին յանուն Տեառն եւ խօսեցաք, Տէր
լիցի վկայ ընդ իս եւ ընդ քեզ, եւ ի մէջ
զաւակի իմոյ եւ ի մէջ զաւակի քո մին-
43 չեւ յյաւիտեան: Եւ յարեաւ Դաւիթ եւ
գնաց, եւ Յովնաթան եմուտ ի քաղաքն:

## ԳԼ. ԻԱ

1 Եւ եկն Դաւիթ ի Նոմբա՝ առ Աքիմե-
լէք քահանայ. եւ զարհուրեցաւ Աքի-
մելէք ի պատահել նորա, եւ ասէ ցնա,
Զի՞ է զի դու միայն ես՝ եւ ոչ ոք է ընդ
2 քեզ: Եւ ասէ Դաւիթ ցԱքիմելէք քա-
հանայ, Բան ինչ հրամայեաց է ինձ ար-
քայի այսօր, եւ ասէ ցիս՝ Մի՛ ոք գի-
տասցէ զբանն վասն որոյ առաքեցի զքեզ,
եւ վասն որոյ պատուիրեցի քեզ.. եւ
հրաման ետու մանկանցն ի տեղւոջն [3]որ
կոչի Աստուծոյ հաւատարմութիւն, փեղ-
3 մոնի եղմոնի": Եւ արդ եթէ իցեն ի ձե-
ռին քում հինգ նկանակ հացի, տուր ի
պէտս իմ, թէ ոչ՝ որչափ եւ գտանիցի:
4 Պատասխանի ետ քահանայն [4]Աստուծոյ
եւ ասէ ցԴաւիթ, Ոչ կայ հաց պիղծ
ընդ ձեռամբ իմով, այլ հաց սրբութեան.
եւ եթէ իցեն զգուշացեալ մանկտին ի
5 կանանց, կերիցեն: Պատասխանի ետ
Դաւիթ քահանային եւ ասէ ցնա, Ի կա-
նանց մեկուսի եմք յերեկն եւ յեռանդէ,
յելանել ինձ [5]ի ճանապարհս արբեցան եւ
մանկտին, զի եւ ճանապարհս իսկ պիղծ
է. եւ վասն այնորիկ այսօր սրբեսցի
6 գործովս իմով": Եւ ետ նմա [6]Աքիմելէք
քահանայ" ի զառաջաւոր հացէն. զի չգոյր
անդ հաց, բաց ի հացէն երեսաց, [7]ա-
ռեալ յերեսաց Տեառն, դնել առաջի հաց
7 ջերմ յաւուրն յորում [8]առ զայն: Եւ
անդ էր մի ի ծառայիցն Սաւուղայ յա-
ւուր յայնմիկ [9]նեղեալ նեեսարաւ" առաջի
Տեառն. եւ անուն նորա Դովեկ [10]Ասորի,
8 արածէր զջորիս" Սաւուղայ: Եւ ասէ
Դաւիթ ցԱքիմելէք, Եթէ իցէ՞ աստ ընդ
ձեռամբ քով գեղարդն կամ սուսեր. զի
զսուսեր իմ եւ զկազմած իմ ոչ առի ի
ձեռին իմում. քանզի բանն արքայի
9 տագնապեաց զիս: Եւ ասէ քահանայն, Ահա
սուսերն Գողիաթու այլազգւոյ Փղշտաց-
ւոյ զոր սպաներ ի հովիտն Եղայ. եւ
այն պատեալ կայ ձորձով յետոյ վակա-
ռին. եթէ զայն առնուս ընդ քեզ՝ առ,
զի ոչ գոյ աստ բաց յայնմանէ. եւ ասէ
Դաւիթ, Զիք իբրեւ զնա, տուր ցիս
զայն. եւ ետ նմա զայն:
10 Եւ յարեաւ Դաւիթ եւ փախեաւ յա-
ւուր յայնմիկ յերեսաց Սաւուղայ, եւ
եկն Դաւիթ առ Անքուս արքայ Գեթայ:
11 Եւ ասեն ծառայքն Անքուսայ ցնա, Ո՞չ
սա է Դաւիթ թագաւոր երկրին. ո՞չ սմա
հուագէին պարաւորքն եւ ասէին, Եհար
Սաւուղ զհազարս, եւ Դաւիթ զբեւրս:
12 Եւ եդ Դաւիթ զբանն ի սրտի իւրում,
եւ երկեաւ յոյժ յերեսաց Անքուսայ ար-
13 քայի Գեթայ. Եւ այլակերպեաց առաջի
նոցա զերեսս իւր, եւ պատճառեցաւ
[11]յաւուր յայնմիկ. եւ կոծանէր առ
դրունս քաղաքին", եւ ծորեցուցանէր զյոր-
ձանս իւր ի վերայ մօրուաց իւրոց, եւ
14 յափշտակեր խաղայր": Եւ ասէ Անքուս
ցծառայս իւր, Ահա տեսէք զայրն այսա-
15 հար, եւ ընդէ՞ր մուծէք զնա առ իս: Միթէ
կարօ՞տ ինչ իցեմ ես այսահարօք, զի
ածէք զդա այսահարել առաջի իմ. [12]մի՛
մտցէ" դա ի տուն իմ:

## ԳԼ. ԻԲ

1 Գնաց անտի Դաւիթ եւ եկն զերծաւ
յայրն Ոդողամայ. եւ լուան եղբարք նո-
րա եւ ամենայն տուն հօր նորա, եւ
2 իջին առ նա անդր: Եւ ժողովէին առ
նա ամենայն վշտացեալք եւ ամենայն
պարտապանք եւ ամենայն ցաւագնեալք
ոգւովք, եւ էր նոցա զօրագլուխ. եւ
էին ընդ նմա իբրեւ արք չորեքհարիւր:
3 Եւ գնաց անտի Դաւիթ ի Մասփա
Մովաբայ. եւ ասէ ցարքայն Մովաբայ,
Եկեսցեն հայր իմ եւ մայր իմ առ քեզ,
մինչեւ գիտասցից թէ զինչ արասցէ ինձ
4 Աստուած: Եւ [13]աղաչեաց զերեսս" ար-

[1] Եբր. ի հարաւոյ կուսէ [2] Եբր. յոլ յոյժ Դաւթի [3] Եբր. յոյս նիշ եւ յայն նիշ [4] Եբր. գոլոսէ [5] Եբր. ի ճանապարհս. եւ անօթք մանկտւոյդ սուրբ են. եւ (հացդ) այդ է ի կարգի պղծութեան, նա եւ այսօր սրբի այլ (հաց) յամանս: [6] Եբր. քահանայն [7] Եբր. որ առնուր [8] Եբր. առնուր [9] Եբր. փակեալ

[10] Եբր. Եդովմայեցի, հզօրագոյն հովուաց [11] Եբր. մոլել ընդ ձեռամբ նոցա և առնէր գծութիւնս ի վերայ փեղկից դրանն [12] Եբր. մտցէ [13] Եբր. ած զնոսա առաջի

քայլն Մովաբայ, եւ բնակեցին առ նմա
զամենայն աւուրս մինչեւ էր Դաւիթ
յանձաւին ։
5 Եւ ասէ Գադ մարգարէ ցԴաւիթ, Մի՛
նստիր յանձաւիդ, այլ արի եւ երթիցես
յերկիրն Յուդայ ։ Գնաց Դաւիթ եւ եկն
նստաւ ի քաղաքին Կարիթ ։
6 Եւ լուաւ Սաւուղ եթէ յայտնեցաւ
Դաւիթ եւ արքն որ ընդ նմա. եւ Սա-
ւուղ նստէր [1]ի բլրին ի ներքոյ հերկին
որ ի Հռամա˝, եւ գեղարդն ի ձեռին
իւրում, եւ ամենայն ծառայք նորա կային
7 շուրջ զնովաւ ։ Եւ խօսեցաւ Սաւուղ
ընդ ծառայսն իւր որ կային շուրջ զնո-
վաւ, եւ ասէ ցնոսա, Լուարուք որդիք
Բենիամենի, թէ արդարեւ ամենեցուն
ձեզ տացէ՞ որդին Յեսսեայ անդս եւ այ-
գեստանս, եւ զամենեսեան զձեզ առ-
նիցէ՞ հազարապետս եւ հարիւրապետս,
8 Զի միաբանեալ կայք ի վերայ իմ դուք
ամենեքեան. եւ ոչ ոք էր որ յայտնէր
յունկն իմ ի գնել որդւոյն իմոյ ուխտ ընդ
որդւոյն Յեսսեայ, եւ չիք ոք ի ձէնջ
որում ցաւէր վասն իմ, եւ յայտնէր
յունկն իմ. զի յարոյց որդի իմ զծառայ
իմ ի վերայ իմ թշնամի, որպէս յաւուր
9 յայսմիկ ։ Պատասխանի ետ Դովեկ [2]Ասորի,
որ կայր ի վերայ [3]ջորւոյն Սաւուղայ,
եւ ասէ, Տեսի զորդին Յեսսեայ եկեալ
ի Նոմբա առ Աքիմելէք որդի Աքիտով-
10 բայ առ քահանայ. Եւ հարցանէր նա
նմա ի Տեառնէ, եւ ետ նմա պաշար, եւ
զսուսերն Գողիադու այլազգւոյ ետ նմա։
11 Եւ առաքեաց արքայ, կոչեաց զԱքի-
մելէք որդի Աքիտովբայ զքահանայ, եւ
զամենայն [4]որդիս հօր նորա˝ զքահանայս
որ էին ի Նոմբա. եւ եկին ամենեքին
12 առ արքայ ։ Եւ ասէ Սաւուղ, Լուր որդի
Աքիտովբայ. եւ ասէ, Աւասիկ կամ,
13 [5]խօսեաց, տէր ։ Եւ ասէ ցնա Սաւուղ,
Զի՞ է զի միաբանեցէք դու եւ որդին
Յեսսեայ հակառակ ինձ, տալ նմա հաց
եւ սուսեր, եւ հարցանել նմա յԱստու-
ծոյ, զնել զնա ինձ թշնամի, որպէս եւ
14 յաւուր յայսմիկ ։ Պատասխանի ետ Աքի-
մելէք արքայի եւ ասէ, Եւ ո՞վ է յամե-
նայն ծառայս քո հաւատարիմ իբրեւ
զԴաւիթ, եւ փեսայ արքայի, եւ իշխան
ամենայն հրամանի քո, եւ փառաւոր
15 ի տան քում ։ Եթէ այսօր աւուր ինչ
սկսեալ իցեմ հարցանել նմա յԱստուծոյ.
քաւ մի՛ լիցի ինձ արքայ ի վերայ
ծառայի իւրոյ այդպիսի բան, եւ ի վերայ
տան հօր իմոյ. զի ոչ գիտէ ծառայ քո
յամենայնի յայսմիկ բան մի մեծ կամ փոքր։
16 Եւ ասէ արքայ Սաւուղ, Մահու մեռ-
ցիս, Աքիմելէք, դու եւ ամենայն տուն
17 հօր քո ։ Եւ ասէ արքայ յառաջնորդակսն
որ կային շուրջ զնովաւ, Մատիք եւ
սպանէք զքահանայսն Տեառն, զի ձեռն
նոցա ընդ Դաւթի է. զի գիտացին եթէ
փախչի նա, եւ ոչ յայտնեցին յունկն իմ.
եւ ոչ կամեցան ծառայքն արքայի արկա-
նել զձեռս իւրեանց, եւ մեղանչել ի
18 քահանայսն Տեառն ։ Եւ ասէ արքայ
ցԴովեկ, Դարձիր դու եւ պատահեա քա-
հանայիցն [5]Տեառն ։ Եւ դարձաւ Դովեկ
[2]Ասորի, եւ կոտորեաց զքահանայսն
[5]Տեառն, եւ սպան յաւուր յայնմիկ [6]երեք
հարեւր˝ եւ հինգ այր, զամենեսին որ
19 կրէին զեփուդն կտաւի ։ Եւ զՆոմբա
քաղաք քահանայիցն եհար սրով սուսերի
յառնէ մինչեւ ցկին, ի տղայոյ մինչեւ
ցստնդիաց, յարջառոյ եւ յիշոյ մինչեւ
ցոչխար՝ բերանով սրոյ ։
20 Եւ ապրեցաւ որդի մի Աքիմելեքայ,
որդւոյ Աքիտովբայ, եւ անուն նորա
Աբիաթար, եւ փախեաւ զհետ Դաւթի ։
21 Եւ պատմեաց Աբիաթար Դաւթի եթէ
կոտորեաց Սաւուղ զամենայն քահա-
22 նայսն Տեառն ։ Եւ ասէ Դաւիթ ցԱբիա-
թար, Գիտէի յաւուր յայնմիկ եթէ Դո-
վեկ [2]Ասորի պատմելով պատմէ Սաւու-
ղայ. ես եմ պատճառ որդւոց տան հօր
23 քո ։ Նիստ առ իս եւ մի՛ երկնչիր. զի
[7]ուր խնդրեսցիս անձին իմոյ տեղի, խնդրե-
ցից եւ քում անձին˝, զի պահեսցիս
դու առ իս ։

## ԳԼ. ԻԳ

1 Եւ ազդ եղեւ Դաւթի եւ ասեն, Ահա
այլազգիք պատերազմին ընդ Կեիլայ,
2 եւ յափշտակեցին զկալորայն ։ Եւ եհարց
Դաւիթ ի Տեառնէ եւ ասէ, Եթէ եր-
թա՞յց եւ հարկանիցե՞մ զայլազգիսն զայ-
նոսիկ ։ Եւ ասէ Տէր ցԴաւիթ, Երթ եւ
հարցես զայլազգիսն, եւ փրկեսցես զԿե-
3 իլա ։ Եւ ասեն արք Դաւթի ցնա, Ահա
մեք աստէն ի Հրէաստանի յերկիւղի

[1] Եբր· ի Գաբաա ընդ ծառովն որ ի բլրին [2] Եբր· Եդովմայեցի [3] Եբր· ծառայիցն [4] Եբր· տուն [5] Եբր· դաւեցէք

[6] Եբր· ութսուն [7] Եբր· որ խնդրիցէ զանձն իմ, խնդրեսցէ եւ զանձն քո

իմք, եւ զիա՞րդ լինիցի եթէ երթիցեմք
4 ի Կեիլա [1]յաւար այլազգեացն։ Եւ յաւել
միւսանգամ Դաւիթ հարցանել ի Տեառնէ.
եւ պատասխանի ետ նմա Տէր եւ ասէ
ցնա, Արի էջ ի Կեիլա, զի ես մատնե-
5 ցից զայլազգիսն ի ձեռս քո։ Եւ գնաց
Դաւիթ եւ արքն որ ընդ նմա ի Կեիլա,
եւ մարտեաւ ընդ այլազգիսն. [2]եւ փախ-
եան յերեսաց նորա," եւ ա՛ռ զանասունս
նոցա, եւ եհար ի նոցանէ հարուածս
մեծամեծս. եւ փրկեաց Դաւիթ զբնա-
6 կիչսն Կեիլայ։ Եւ եղեւ ի փախչելն
Աբիաթարայ որդւոյ Աքիմելեքայ առ
Դաւիթ [2]եւ ինքն ընդ Դաւթի էջ" ի
Կեիլա. եւ ունէր զեփուդն ի ձեռին իւրում։
7 Եւ ազդ եղեւ Սաւուղայ եթէ եկն
Դաւիթ ի Կեիլա. եւ ասէ Սաւուղ, Վա-
ճառեաց զնա Աստուած ի ձեռս իմ. զի
փակեցաւ մտեալ ի քաղաք դրանց եւ
8 գռնափակաց։ Եւ հրաման ետ Սաւուղ
ամենայն ժողովրդեանն իջանել ի պա-
տերազմ ի Կեիլա, ունել զԴաւիթ եւ
9 զարս նորա։ Եւ գիտաց Դաւիթ [3]զՍա-
ւուղայ եթէ ոչ դադարէ ի չարութենէ".
եւ ասէ Դաւիթ ցԱբիաթար քահանայ,
10 Մատո՛ զեփուդ [2]Տեառն։ Եւ ասէ Դաւիթ,
Տէր Աստուած Իսրայէլի, լսելով լուաւ
ծառայ քո եթէ խնդրէ Սաւուղ գալ ի
վերայ Կեիլայ, ապականել զքաղաքս
11 վասն իմ. [4]Եթէ պաշարիցի". եւ եթէ
իջանիցէ՞ [2]այժմ այսր Սաւուղ որպէս
լուաւ ծառայ քո, Տէր Աստուած Իս-
րայէլի, պատմեա ծառայի քում։ Եւ
12 ասէ Տէր, [5]Պաշարեսցի։ Եւ ասէ Դաւիթ,
Եթէ մատնեսցե՞ն զիս Կեիլացիքս եւ
զարս իմ ի ձեռս Սաւուղայ։ Եւ ասէ
13 Տէր, Մատնեսցեն։ Եւ յարեաւ Դաւիթ եւ
արքն որ ընդ նմա իբրեւ [6]չորեքհարիւր,
ելին ի Կեիլայ եւ գնացին յո եւ գնացին. եւ
ազդ եղեւ Սաւուղայ եթէ զերծաւ Դաւիթ
ի Կեիլայ, եւ դադարեաց յելանելոյ։
14 Եւ նստաւ Դաւիթ յանապատին [2]ի
Մասերեթ յանձուկսն, եւ նստէր ի լերին
անապատին Զիփայ [2]ի մայր լերինն ի
մթին երկրին"։ Եւ խնդրէր զնա Սաւուղ
զամենայն աւուրս, եւ ոչ մատնեաց
15 զնա Տէր ի ձեռս նորա։ Եւ ետես Դա-
ւիթ եթէ ելանէ Սաւուղ խնդրել զԴաւիթ,
եւ Դաւիթ նստէր յանապատին [7]ի մայր
լերինն Զիփայ ի նորում"։
16 Եւ յարեաւ Յովնաթան որդի Սաւու-
ղայ, եւ չոգաւ առ Դաւիթ [8]ի նորն.
17 եւ հաստատեաց զձեռս [9]իւր ի Տէր". Եւ
ասէ ցնա, Մի՛ երկնչիր, զի ոչ գտցէ
զքեզ ձեռն Սաւուղայ հօր իմոյ. եւ դու
թագաւորեսցես ի վերայ Իսրայէլի, եւ
ես եղէց քո երկրորդ. եւ Սաւուղ հայր
18 իմ գիտէ թէ այդպէս է։ Եւ ուխտեցին
ուխտ երկոքեան առաջի Տեառն։ Եւ
նստէր Դաւիթ [10]ի նորումն. եւ Յովնա-
թան գնաց ի տուն իւր։
19 Եւ ելին Զիփացիքն [11]ի մայր լեռնէն
առ Սաւուղ ի բլուրն", եւ ասեն, Ո՞չ
աւասիկ Դաւիթ թաքուցեալ է առ մեզ
[2]ի Մասերա յանձուկս [12]նորոյն ի բլուրն
20 Եքելայ [13]ընդ աջմէ" Յեսեմոնայ։ Եւ
արդ ըստ ամենայն ցանկութեան անձին
արքայի իջցէ իջանելով առ մեզ. [14]քանզի
21 փակեցուք զնա ի ձեռս արքայի։ Եւ
ասէ ցնոսա Սաւուղ, Օրհնեալ էք դուք
ի Տեառնէ, զի ցաւեցայք ձեզ վասն իմ։
22 Արդ երթայք եւ այլ եւս [15]կազմեցա-
րուք, եւ գիտեցէք եւ տեսէք զտեղին
ուր լիցի ոտն նորա. [16]հաւէք վաղվա-
ղակի անդր ուր ասացէքն թէ է, գուցէ
23 խորամանգիցէ"։ Եւ քննեսջիք եւ տես-
ջիք յամենայն տեղեաց ուր թաքուցեալ
իցէ, եւ դարձջիք առ իս պատրաստու-
թեամբ, եւ երթիցուք ընդ ձեզ. եւ ե-
ղիցի եթէ իցէ յերկրին, խուզեցից զնա
24 [17]ամենայն հազարաւորօք" Յուդայ։ Եւ
յարեան եւ գնացին Զիփացիքն յերեսաց
Սաւուղայ. եւ Դաւիթ եւ արք նորա
էին յանապատին Մաոնայ [18]առ երեկս"
25 ընդ աջմէ Յեսեմոնայ։ Եւ գնաց Սաւուղ
եւ արք իւր խնդրել զԴաւիթ. եւ ազդ
արարին Դաւթի, եւ էջ ի վէմն [19]որ յա-
նապատին Մաոնայ. եւ լուաւ Սաւուղ,
եւ պնդեցաւ զհետ Դաւթի յանապատն
26 Մաոնայ։ Երթայր Սաւուղ [2]եւ արք
իւր" զայս կողմն լերինն, եւ Դաւիթ
եւ արք իւր առ ի կողմն այն կողմն
լերինն. եւ եղեւ Դաւթի [20]թաքստեամբ

[1]Օրին. ի ճակատս [2]Յ Օրին. [illegible] [3]Օրին. եթէ Սաւուղ նիւթէ նմա չարիս [4]Օրին. Մի՞թէ մատնեսցե՞ն զիս արք Կեիլայ ի ձեռս նորա [5]Օրին. իջցէ [6]Օրին. վեցհարիւր

[7]Օրին. Զիփայ, յանտառին [8]Օրին. յանտառն [9]Օրին. նորա յԱստուած [10]Օրին. յանտառին [11]Օրին. առ Սաւուղ ի Գաբաա [12]Օրին. անտառին [13]Ոմ. ի հարաւոյ [14]Օրին. եւ [15]Օրին. ստուգեցէք [16]Օրին. ո՞ ետես զնա անդ, զի ասեն եթէ յոյժ խորամանգ է նա [17]Օրին. յամենայն հազարաւորս [18]Օրին. ի դաշտին [19]Օրին. եւ նստաւ [20]Օրին. ճեպով

երթալ յերեսաց Սաւուղայ. եւ Սաւուղ
եւ արք նորա պատեցան զԴաւթիւ եւ
27 զարամբք նորա ունել զնոսա։ Եւ եկն
հրեշտակ առ Սաւուղ եւ ասէ, Փութա
եկ այսր, զի արշաւեցին այլազգիք յեր-
28 կիրս։ Եւ դարձաւ Սաւուղ չպնդել զհետ
Դաւթի, եւ չոգաւ ընդդէմ այլազգ-
եացն. վասն այնորիկ կոչեցաւ տեղին
այն Վէմ բաժանեալ։

ԳԼ. ԻԴ

1 Եւ յարեաւ Դաւիթ անտի եւ նստաւ
2 յանձուկս [1]Գադդայ։ Եւ եղեւ իբրեւ դար-
ձաւ Սաւուղ յայլազգեացն, ազդ եղեւ
նմա եւ ասեն, Ահաւասիկ Դաւիթ յա-
3 նապատին [1]Գադդայ է։ Եւ [2]առ ընդ իւր"
երիս հազարս արանց ընտրելոց յամե-
նայն Իսրայելէ, եւ գնաց խնդրել զԴաւիթ
եւ զարս նորա, [3]հանդէպ Եղիմայ որսոյն
4 եղջերուաց"։ Եւ եկն ի զաւակս հօտիցն
որ առ ճանապարհաւն. եւ անդ էր այր
մի, եւ եմուտ Սաւուղ հանգչել. եւ
Դաւիթ եւ արք նորա նստէին ի ներք-
5 նում այրին։ Եւ ասեն արքն Դաւթի
ցնա, Ահա այս օր է, զորմէ ասաց Տէր
ցքեզ մատնել զթշնամիս քո ի ձեռս քո.
եւ արասցես ընդ նա որպէս հաճոյ թուի
յաչս քո։ Եւ յարեաւ Դաւիթ եւ եհատ
6 զատուն լօդկին Սաւուղայ գաղտ։ Եւ
եղեւ յետ այնորիկ զղջացոյց զԴաւիթ
սիրտն իւր, զի եհատ զատուն լօդկի
7 նորա։ Եւ ասէ Դաւիթ ցարս իւր, Քաւ
լիցի ինձ ի Տեառնէ, թէ արարից զբանդ
զայդ առ տեառն իմում օծելոյ Տեառն, մխել
ի նա զձեռս իմ. զի օծեալ Տեառն է նա։
8 Եւ հաճեաց Դաւիթ զարսն իւր բանիւք,
եւ ոչ ետ նոցա յառնել եւ սպանանել
զՍաւուղ. եւ Սաւուղ յարեաւ յայրէ
9 անտի եւ էջ ի ճանապարհն։ Եւ յարեաւ
Դաւիթ զկնի նորա ել յայրէ անտի, եւ
աղաղակեաց Դաւիթ զհետ նորա եւ ասէ,
Տէր իմ արքայ։ Եւ հայեցաւ Սաւուղ ի
թիկունս իւր. եւ անկաւ Դաւիթ ի վե-
րայ երեսաց իւրոց յերկիր, եւ եպագ
10 նմա երկիր։ Եւ ասէ Դաւիթ ցՍաւուղ,
Ընդէ՞ր լսես բանից ժողովրդեանն որ
ասեն թէ Դաւիթ խնդրէ [4]զանձն քո"։
11 Ահա յաւուր յայսմիկ տեսին աչք քո,
որպէս մատնեաց զքեզ Տէր այսօր ի
ձեռս իմ յայրի անդ, եւ [5]ոչ կամեցայ
սպանանել" զքեզ. եւ խնայեցի ի քեզ,
եւ ասացի թէ Ոչ ձգեցից զձեռն իմ ի
12 տէր իմ. զի օծեալ Տեառն է նա։ Եւ
տես, հայր իմ, ահա ատուն լօդկի քո
ի ձեռին իմում. ես հատի զատուն հան-
դերձի քո, եւ ոչ սպանի զքեզ. եւ ծա-
նիր եւ տես [6]այսօր, զի ոչ գոյ ի ձեռին
իմում չարութիւն եւ ոչ արհամարհու-
թիւն եւ ոչ ամպարշտութիւն, եւ ոչ մե-
ղայ ինչ քեզ. եւ դու պաշարես զանձն
13 իմ առնուլ զնա։ Դատ արասցէ Տէր ընդ
իս եւ ընդ քեզ. եւ առցէ Տէր զվրէժ
իմ ի քէն, եւ ձեռն իմ մի՛ եղիցի ի քեզ։
14 Որպէս ասէ հին առակն, Յանօրէն
ձեռաց ելցէ մեղս, եւ ձեռն իմ մի՛ ե-
15 ղիցի ի քեզ։ Եւ արդ զո՞յր հետ ելեալ
ես, արքայդ Իսրայելի, եւ զո՞ հալածես.
զհետ շան միոյ մեռելոյ եւ զհետ լուոյ
16 միոյ։ Եղիցի Տէր դատաւոր եւ իրաւա-
րար ընդ իս եւ ընդ քեզ. տեսցէ Տէր
եւ դատեսցի զդատաստանս իմ, եւ ա-
րասցէ ինձ իրաւունս ի ձեռաց քոց։
17 Եւ եղեւ իբրեւ կատարեաց Դաւիթ
խօսել զբանս զայսոսիկ ընդ Սաւուղայ,
եւ ասէ Սաւուղ, Այդ քո՞ ձայն իցէ,
որդեակ իմ Դաւիթ. եւ ամբարձ Սա-
18 ւուղ զձայն իւր եւ ելաց։ Եւ ասէ Սա-
ւուղ ցԴաւիթ, Դու արդար ես քան զիս.
զի դու հատուցեր ինձ բարիս, եւ ես
19 հատուցի քեզ չարիս։ Եւ դու պատմե-
ցեր ինձ այսօր զոր արարեր ինձ բարիս,
եւ թէ որպէս փակեաց զիս Տէր այսօր
20 ի ձեռս քո եւ ոչ սպաներ զիս։ Զի որ-
պէս գտանէ ոք զթշնամի իւր [6]ի նեղու-
թեան, եւ արձակիցէ զնա բարեաւ ընդ
ճանապարհ, եւ Տէր հատուսցէ [7]նմա
21 բարիս. որպէս դու արարեր [8]այսօր։ Եւ
արդ գիտեմ զի թագաւորելով թագաւո-
րեսցես, եւ հաստատեսցի ի ձեռս քո
22 թագաւորութիւնն Իսրայելի։ Եւ արդ
երդուիր ինձ ի Տէր, զի մի՛ սատակես-
ցես զզաւակ իմ զկնի իմ, եւ մի՛ եղծցես
23 զանուն իմ ի տանէ հօր իմոյ։ Եւ երդ-
ուաւ Դաւիթ Սաւուղայ։ Եւ գնաց Սա-
ւուղ ի տեղի իւր, եւ Դաւիթ եւ արք
իւր [9]ելին ի Մասարա" յանձուկն։

ԳԼ. ԻԵ

1 Եւ մեռաւ Սամուէլ, եւ ժողովեցան ա-
մենայն Իսրայէլ եւ կոծեցան զնա, եւ

[1] Եբր. Ենգադդայ [2] Եբր. ա՛ռ Սաւուղ [3] Եբր. ընդ երեսս ապառաժից այծեմանց [4] Եբր. քեզ չարիս
[5] Եբր. ասացին զի սպանից [6] Եբր. [illegible] [7] Եբր. քեզ [8] Եբր. այսօր ինձ [9] Եբր. ելին

*թաղեցին զնա ի տան իւրում յԱրիմա-*
*թեմ։ Եւ յարեաւ Դաւիթ եւ էջ յանա-*
*պատն [1]Մաոնայ։*
2 *Եւ էր այր մի ի Մաոն, եւ [2]հօտք իւր՝*
*ի Կարմեղոս, եւ այրն մեծատուն էր յոյժ.*
*եւ նորա էին ոչխարք երեք հազարք,*
*եւ այծք հազար. եւ եղեն կտուրք հօ-*
3 *տիցն ի Կարմեղոս։ Եւ անուն նորա Նա-*
*բաղ, եւ անուն կնոջ նորա Աբիգեա.*
*եւ կին նորա առատ իմաստութեամբ եւ*
*գեղեցիկ տեսլեամբ յոյժ. եւ այրն խիստ*
*եւ չար խորհրդովք եւ այր [3]շնաբարոյ։*
4 *Եւ լուաւ Դաւիթ [4]յաւուր յայնմիկ՝ եթէ*
*կտրէ Նաբաղ Կարմեղացի զհօտս իւր։*
5 *Եւ առաքեաց Դաւիթ մանկունս տասն,*
*եւ ասէ Դաւիթ ցմանկունսն, Ելէք ի*
*Կարմեղոս՝ եւ երթայք առ Նաբաղ, եւ*
6 *հարցէք յանուն իմ զողջունէ նորա, Եւ*
*ասասջիք այսպէս [5]ի սոյն աւուրս՝ Ողջ*
*իցես, դու եւ տուն քո եւ ամենայն որ*
7 *ինչ քո՝ ողջ լիցի։ Եւ արդ ուստի լուայ*
*եթէ կտուրք են հօտից [6]քոց որ ընդ*
*մեզ էին յանապատի աստ՝, եւ ոչ ար-*
*գելաք զդոսա, եւ ոչ խնդրեցաք զդոսա*
*եւ ոչ իւիք զամենայն աւուրս որչափ եւ*
8 *էին ընդ մեզ ի Կարմեղոս։ Հարց ցմանկունս*
*քո եւ պատմեսցեն քեզ, եւ գտցեն ման-*
*կունքդ շնորհս առաջի աչաց քոց, զի ի*
*բարի աւուր եկին. արդ տացես որչափ*
*ինչ եւ գտցէ ձեռն քո ծառայից քոց,*
9 *եւ որդւոյ քում Դաւթի։ Եւ եկին ման-*
*կունքն Դաւթի, եւ խօսեցան զբանսն*
*ընդ Նաբաղայ, ըստ ամենայն բանիցն*
10 *այնոցիկ յանուն Դաւթի։ [7]Ընդոստա-*
*ցաւ, եւ՝ ետ պատասխանի ծառայիցն*
*Դաւթի եւ ասէ, Ո՞ Դաւիթ, կամ ո՞*
*որդին Յեսսեայ. բազմացեալ են այսօր*
*ծառայք զնացականք իւրաքանչիւր յե-*
11 *րեսաց տեառն իւրոյ։ Արդ առնուցում*
*զհաց իմ եւ [8]զգինի իմ եւ զզենլիս իմ*
*զոր զենի կտրողաց իմոց պատրուճակս,*
*եւ տացե՞մ արանց զորս ոչ գիտիցեմ*
12 *ուստի իցեն։ Եւ դարձան մանկունքն*
*Դաւթի ի ճանապարհ իւրեանց, եւ եկին*
*պատմեցին Դաւթի ըստ բանիցն այնո-*
13 *ցիկ։ Եւ ասէ Դաւիթ ցարսն իւր, Ածէք*
*ընդ մէջ իւրաքանչիւր զսուր իւր. եւ*
*ածին ընդ մէջ այր իւրաքանչիւր զսու-*
*սեր իւր. ած ընդ մէջ եւ Դաւիթ զսուր*
*իւր. եւ ելին զհետ Դաւթի իբրեւ արք*
*չորեքհարիւր, եւ երկերիւրն եւս անդէն*
*նստան առ կարասին։*
14 *Եւ Աբիգեայ կնոջ Նաբաղու պատմեաց*
*մի ոմն ի մանկտւոյ անտի եւ ասէ, Ահա*
*առաքեաց Դաւիթ հրեշտակս յանապա-*
*տէն օրհնել զտէր մեր, եւ նա [9]խուսեաց*
15 *ի նոցանէն՝։ Եւ արքն երախտաւոր էին*
*մեզ յոյժ, եւ ոչ արգելին զմեզ, եւ ոչ*
*իւիք խուեցին զմեզ՝ որչափ եղեաք ընդ*
16 *նոսա ի բացի։ Եւ իբրեւ զպարիսպ էին*
*մեզ զցայգ եւ զցերեկ զամենայն ա-*
*ւուրսն որչափ էաք ընդ նոսա եւ արա-*
17 *ծէաք զխաշինսն։ Եւ արդ գիտասցես եւ*
*տեսցես զինչ գործեսցես. զի վճարեալ*
*է չարութիւն ի վերայ տեառն մերոյ, եւ*
*ի վերայ ամենայն տան նորա. եւ նա*
*այր ժանտ է, եւ ոչ գոյ խօսել ընդ նմա։*
18 *Եւ անճապարեաց Աբիգեա, եւ առ եր-*
*կերիւր նկանակ եւ երկուս ամանս գին-*
*ւոյ եւ հինգ ոչխար հասուցեալ եւ հինգ*
*արդու փոխնդոյ եւ [10]կայթ մի չամիչ՝,*
*եւ պաղատիտս երկերիւր, եւ եդ ի վե-*
19 *րայ իշոց։ Եւ ասէ ցմանկտին իւր, Եր-*
*թայք յառաջագոյն քան զիս, եւ ես գամ*
*զկնի ձեր. եւ առն իւրում Նաբաղայ ոչ*
20 *եհան ի վեր։ Եւ եղեւ ընդ իջանել նո-*
*րա յէշն եւ ընդ իջանել ընդ զանխուլ*
*լերինն, եւ ահա Դաւիթ եւ արք նորա*
*իջանէին ընդ առաջ նորա, եւ գիպեցաւ*
21 *նոցա։ Եւ ասէ Դաւիթ, Զուր ուրեմն*
*պահեցի զամենայն ինչ Նաբաղու յանա-*
*պատի անդ, եւ ոչ խնդրեցաք առնուլ յամե-*
*նայնէ որ ինչ էր նորա եւ ոչ ինչ. եւ հա-*
22 *տոյց ինձ չար երախտեաց իմոց։ Օն եւ օն*
*արասցէ Աստուած [11]Դաւթի, եւ օն եւ օն*
*յաւելցէ, եթէ թողից յամենայնէ Նաբաղու*
*մինչեւ ցառաւօտն որ զորմով միզիցէ։*
23 *Իբրեւ ետես Աբիգեա զԴաւիթ փու-*
*թացաւ եւ վազեաց յիշոյն, եւ անկաւ*
*առաջի Դաւթի ի վերայ երեսաց իւրոց,*
24 *եւ երկիր եպագ նմա յերկիր։ Եւ ան-*
*կաւ առ ոտս նորա եւ ասէ, Յիս, տէր,*
*մեղս իմ. բայց խօսեսցի աղախին քո*
*յականջս քո, եւ լուիցես բանից աղախնոյ*
25 *քո։ Մի՛ դիցէ տէր իմ զմիտ իւր ի վե-*
*րայ առն ժանտի Նաբաղայ. զի ըստ*
*անուան նորա եւ ինքն է. [12]Նաբաղ ա-*
*նուն նորա, եւ անզգամութիւն ընդ նմա.*

[1]Եբր. Փառանու [2]Եբր. ստացք նորա [3]Կամ, Քաղեբեան [4]Եբր. յանապատին [5]Եբր. [illegible] [6]Եբր. քոց. հովիւք քո ընդ մեզ էին [7]Եբր. Եւ Նաբաղ [8]Եբր. զջուր

[9]Եբր. անարգեաց զնոսա [10]Եբր. Հարեւր ողկոյզ չամիչ [11]Եբր. թշնամեաց Դաւթի [12]Այսինքն, անզգամ

և ես աղախին քո ոչ տեսի զմանկունս
26 քո զոր առաքեցեր։ Եւ [1]արդ կենդանի
է Տէր և կենդանի է անձն քո, որպէս
արգել զքեզ Տէր չգալ յարիւն [2]անպարտ,
այլ պահել զձեռն քո առ քեզ. և արդ
եղիցին իբրև զՆաբաղ թշնամիք քո և
27 որ խնդրիցեն տեառն իմում չարիս։ Եւ
արդ առ զօրհնութիւնս զայս զոր եբեր
աղախին քո տեառն իմում. և տացես
մանկտւոյդ որ կան առաջի տեառն իմոյ։
28 Եւ բարձ զյանցանս աղախնոյ քո. զի առ-
նելով արասցէ Տէր տեառն իմում տուն
հաւատարիմ. զի զպատերազմ [3]տեառն
իմոյ Տէր՝՝ պատերազմի, և չարութիւն
29 մի՛ երբեք գտցի ի քեզ։ Եւ [4]ոչ յարիցէ՝՝
մարդ հալածել զքեզ, և խնդրել զանձն
քո. և եղիցի անձն տեառն իմոյ ծրար-
եալ ի ծրարի կենաց [5]Տեառն Աստուծոյ՝՝,
և զանձն թշնամեաց քոց [6]պարսաքա-
30 րեսցես ի մէջ պարսատկաց։ Եւ եղիցի
յորժամ արասցէ Տէր տեառն իմում զա-
մենայն բարիս զոր խօսեցաւ ածել ի
վերայ քո, և տացէ զքեզ պատուիրա-
31 նաւ առաջնորդ ի վերայ Իսրայելի, Մի՛
լիցի [7]զզծութիւն և գայթագղութիւն
ի սրտի տեառն իմոյ հեղուլ զարիւն
արդար տարապարտուց, և ապահեսցի
ձեռն տեառն իմոյ առ իւր՝՝. և բարի
արասցէ Տէր տեառն իմում, և յիշես-
ցես զաղախին քո [2]բարի առնել նմա՝՝։
32 Եւ ասէ Դաւիթ ցԱբիգեա, Օրհնեալ
Տէր Աստուած Իսրայելի որ առաքեաց
33 զքեզ այսօր ընդ առաջ իմ. Եւ օրհնեալ
բարք քո, և օրհնեալ լիցիս դու որ
արգելեր զիս այսօր աստ չերթալ յա-
34 րիւն, և պահել զձեռն իմ առ իս։ Բայց
կենդանի է Տէր Աստուած Իսրայելի, որ
արգել զիս այսօր յանելոյ քեզ չար.
զի թէ չէիր փութացեալ և եկեալ ընդ
առաջ [8]իմ. քանզի ասացի, թէ ոչ մնասցէ՝՝
Նաբաղայ մինչև ցլոյս առաւօտու որ
35 զորմով միզիցէ։ Եւ ա՛ռ Դաւիթ ի ձե-
ռաց նորա զամենայն ինչ զոր եբեր նմա,
և ասէ ցնա, Ել ի տուն քո խաղաղու-
թեամբ. տես զի լուայ ձայնի քում, և
ակն առի երեսաց քոց։
36 Եւ գնաց Աբիգեա առ Նաբաղ. և էր

[1] Եբր. արդ, տէր իմ, [2] Յեբր. զուրէ [3] Եբր. Տեառն տէր իմ [4] Եբր. յարեաւ [5] Եբր. ընդ Տեառն Աստուծոյ քում [6] Եբր. պարսաքարեսցէ [7] Եբր. այս քեզ ի վարանս, և ի փիշտ սրտի տեառն իմում հեղուլ զարիւն տարապարտուց, և առնել փրկութիւն տեառն իմոյ իւրովի [8] Եբր. իմ, չէր մնացեալ

խրախութիւն ի տան նորա իբրև զխրա-
խութիւն թագաւորի, և սիրտ Նաբա-
ղու զուարճացեալ էր յինքեան, և ինքն
արբեալ էր յոյժ. և ոչ պատմեաց նմա
բան մի մեծ կամ փոքր մինչև ցլոյս
37 առաւօտուն։ Եւ եղև ընդ առաւօտն,
իբրև սթափեցաւ Նաբաղ ի գինւոյ անտի,
պատմեաց նմա կին իւր զբանս զայ-
սոսիկ. և մեռաւ սիրտ նորա ի նմա,
38 և եղև իբրև զքար։ Եւ եղեն իբրև
աւուրք տասն, և եհար Տէր զՆաբաղ,
և մեռաւ։
39 Եւ լուաւ Դաւիթ եթէ մեռաւ Նա-
բաղ, և ասէ, Օրհնեալ Տէր Աստուած
որ դատեաց զդատաստանս նախատանաց
իմոց ի ձեռաց Նաբաղայ. և զծառայ
իւր ապրեցոյց ի ձեռաց չարեաց, և
զչարութիւն Նաբաղայ դարձոյց Տէր ի
գլուխ նորա. և առաքեաց Դաւիթ և
խօսեցաւ ընդ Աբիգեայ առնուլ զնա իւր
40 կնութեան։ Եւ եկին ծառայքն Դաւթի
առ Աբիգեա ի Կարմեղոս, խօսեցան ընդ
նմա և ասեն, Դաւիթ առաքեաց զմեզ
առ քեզ առնուլ զքեզ իւր կնութեան։
41 Եւ յարեաւ երկիր եպագ ի վերայ երե-
սաց իւրոց յերկիր և ասէ, Ահաւասիկ
կայ աղախին քո ի ստրկութիւն լուա-
42 նալոյ զոտս ծառայից տեառն իմոյ։ Եւ
փութացեալ յարեաւ Աբիգեա, ել յէշ.
և հինգ աղջիկ գնային զհետ նորա,
և չոգաւ զհետ ծառայիցն Դաւթի, և
եղև նորա կին։
43 Եւ զԱքինովամ ա՛ռ Դաւիթ յԵզրայելէ.
44 և էին նորա երկոքեան կանայք։ Եւ
Սաւուղ ետ զՄեղքող դուստր իւր զկին
Դաւթի՝ Փաղտիելի որդւոյ Յեմեսեայ
Ռոմմացւոյ։

## ԳԼ. ԻԶ

1 Եւ եկին Զիփացիքն [9]ի մայրէն առ Սա-
ւուղ ի բլուրն՝՝ և ասեն, Ահա Դաւիթ
թաքուցեալ է առ մեզ ի բլրին Եքեղա-
2 տայ՝ հանդէպ Յեսեմոնայ։ Եւ յարեաւ
Սաւուղ և էջ յանապատն Զիփայ, և
ընդ նմա երեք հազարք արանց ընտրելոց
յԻսրայելէ, խնդրել զԴաւիթ յանապա-
3 տին Զիփայ։ Եւ բանակեցաւ Սաւուղ ի
բլրին Եքեղատայ հանդէպ Յեսեմոնայ ի
վերայ ճանապարհին. և Դաւիթ նստէր
յանապատին. իբրև ետես Դաւիթ թէ
եկն Սաւուղ զկնի նորա յանապատն,

[9] Եբր. առ Սաւուղ ի Գաբաա

4 Առաքեաց Դաւիթ լրտեսս, եւ գիտաց
եթէ եկեալ է Սաւուղ պատրաստու-
թեամբ [1]ի Կեիլա։
5 Եւ յարեաւ Դաւիթ գաղտ եւ եկն ի
տեղին ուր նստէր Սաւուղ. եւ ետես
Դաւիթ զտեղին ուր ննջեաց Սաւուղ,
եւ անդ Աբեններ որդի Ներեայ զօրա-
վար նորա. եւ Սաւուղ ննջէր [2]ի պայ-
պաջունս, եւ զօրն բանակեալ էր շուրջ
6 զնովաւ։ Պատասխանի ետ Դաւիթ եւ
ասէ ցԱքիմելէք Քետացի եւ ցԱբեսսա
որդի Շարուհեայ եղբայր Յովաբայ, եւ
ասէ, Ո՞ մտցէ ընդ իս առ Սաւուղ ի
բանակն. եւ ասէ Աբեսսա, Ես մտից
7 ընդ քեզ։ Եւ մտին Դաւիթ եւ Աբեսսա
ի զօրն զայգ. եւ ահա Սաւուղ ննջէր
[2]ի պաղպաջունս, եւ գեղարդն ցցեալ
յերկրի ի սնարից նորա. եւ Աբեններ եւ
8 զօր նորա ննջէին շուրջ զնովաւ։ Եւ ասէ
Աբեսսա ցԴաւիթ, Փակեաց Տէր այսօր
զթշնամին քո ի ձեռս քո. արդ հարից
զնա գեղարդեամբս յերկիր միանգամ եւ
9 ոչ կրկնեցից։ Եւ ասէ Դաւիթ ցԱբեսսա,
Մի՛ հարկաներ զդա. զի ո՞վ իցէ որ ձգիցէ
զձեռն իւր յօծեալ Տեառն եւ սրբիցի։
10 Եւ ասէ Դաւիթ, Կենդանի է Տէր, բայց
եթէ Տէր [3]խրատեսցէ զդա, եւ կամ թէ
օր իւր եկեսցէ եւ մեռցի, կամ թէ ի
11 պատերազմ մտցէ եւ յաւելցի. Քաւ լիցի
ինձ ի Տեառնէ ձգել զձեռն իմ յօծեալ
Տեառն. բայց արդ առ զգեղարդնդ ի
սնարից դորա եւ զկուժ ջրոյդ, եւ գնաս-
12 ցուք ի մեզ։ Եւ առ Դաւիթ զգեղարդն
եւ զկուժ ջրոյն ի սնարից նորա, եւ
գնացին յինքեանս. եւ ոչ ոք էր որ տե-
սանէր եւ ոչ որ գիտէր, եւ ոչ ոք էր
որ յառնէր. զի ամենեքեան ի քուն էին,
քանզի թմբրութիւն ի Տեառնէ անկաւ
ի վերայ նոցա։
13 Եւ անց Դաւիթ յայն կողմն, եւ եկաց
ի վերայ գլխոյ լերինն ի բացեայ, եւ
14 բազում ճանապարհ էր ի մէջ նոցա։ Բար-
բառեցաւ Դաւիթ ի զօրն, եւ խօսեցաւ
ընդ Աբեններեայ եւ ասէ, Ո՞չ տաս պա-
տասխանի, Աբեններ. եւ [4]ասէ, Ո՞վ ես
15 դու որ կոչես [1]զիս առ արքայ։ Եւ ասէ
Դաւիթ ցԱբեններ, Ո՞չ ապաքէն այր
քաջ ես դու, եւ ո՞վ է իբրեւ զքեզ ի
մէջ Իսրայելի. եւ ընդէ՞ր ոչ պահես
զտէր քո զարքայ. զի եմուտ ոմն ի
զօրուէդ սպանանել զտէր քո զարքայ։
16 Ձէ բարի բանդ զոր արարեր. կենդանի
է Տէր զի որդիք մահու էք դուք որ
[5]պահէք զտէր ձեր զարքայ զօծեալ Տեառն.
եւ արդ աւասիկ գեղարդնն արքայի եւ
կուժ ջրոյն ո՞ւր է որ առ սնարս նորա
17 կային։ Եւ ծանեաւ Սաւուղ զձայնն
Դաւթի եւ ասէ, Այդ ձայն քո՞ է, որդ-
եակ իմ Դաւիթ. եւ ասէ Դաւիթ, [6]Ծա-
18 ռայ քո եմ", տէր իմ արքայ։ Եւ ասէ,
Ընդէ՞ր է այդ, տէր իմ, զի մտեալ ես
զկնի ծառայի քո. զի՞ մեղայ, եւ զի՞
19 գտաւ յիս միաս։ Եւ արդ լուիցէ տէր
իմ արքայ զբանս ծառայի իւրոյ. եթէ
[7]Աստուծոյ շարժեալ է զքեզ ի վերայ
իմ, ճենճերեսցի զոհ՝ քո. եւ եթէ որդւոց
մարդկան, անիծեալ լիցին դոքա առաջի
Տեառն. զի մերժեցին զիս այսօր չհաս-
տատել ինձ ի ժառանգութեան Տեառն.
ասեն, Երթ ծառայեա աստուածոց օտա-
20 րաց։ Եւ արդ մի՛ անկցի արիւն իմ յեր-
կիր առաջի երեսաց Տեառն. զի ելեալ
է թագաւոր Իսրայելի խնդրել [8]զանձն
իմ, որպէս ընթանայցէ ագռաւ" ընդ
լերինս։
21 Եւ ասէ Սաւուղ, Մեղայ, դարձիր,
որդեակ իմ Դաւիթ, զի ոչ ինչ արարից
քեզ չար, փոխանակ զի պատուական է
անձն իմ առաջի աչաց քոց. եւ ես յայսմ
աւուր ժամանակի զրախնդիր եւ յան-
22 ցաւոր եմ յոյժ։ Պատասխանի ետ Դա-
ւիթ եւ ասէ, Ահաւասիկ գեղարդնն ար-
քայի, անցցէ մի ոք ի մանկտւոյդ եւ
23 առցէ զդա։ Եւ Տէր հատուսցէ իւ-
րաքանչիւր ումեք ըստ արդարութեանց
իւրոց եւ ըստ հաւատարմութեան. զի
ո՛րպէս մատնեաց զքեզ Տէր այսօր ի
ձեռս իմ, եւ ոչ կամեցայ ձգել զձեռն
24 իմ յօծեալ Տեառն։ Եւ որպէս մեծացաւ
անձն քո աստ այսօր առաջի աչաց ի-
մոց, այնպէս մեծասցի անձն իմ առաջի
Տեառն, [1]եւ ամրացուսցէ զիս" եւ ապ-
րեցուսցէ զիս յամենայն նեղութենէ։
25 Եւ ասէ Սաւուղ ցԴաւիթ, Օրհնեալ ես
դու, որդեակ իմ Դաւիթ, եւ առնելով
արասցես եւ զօրանալով զօրասցիս։ Եւ
գնաց Դաւիթ զճանապարհ իւր, եւ Սա-
ւուղ դարձաւ ի տեղի իւր։

[1] Յեբր. ղ–ի–ա–ե  [2] Եբր. ի մէջ կառաց  [3] Եբր. հարցէ  [4] Եբր. ասէ Աբեններ

[5] Եբր. ոչ պահէք  [6] Եբր. Ձայն իմ  [7] Եբր. Տեառն  [8] Եբր. լու մի, որպէս հալածիցէ կաքաւ

## Գլ. ԻԷ

1 Եւ խօսեցաւ Դաւիթ ի սրտի իւրում եւ
ասէ, Արդ անկանիցիմ յաւուր միում ի
ձեռս Սաւուղայ. եւ չէ ինձ բարի, ե-
թէ ոչ զերծայց յերկիրն Փղշտացւոց.
եւ [1]եթէ իցէ՝ խնդրիցէ զիս Սաւուղ"
յամենայն սահմանս Իսրայէլի, ապրե-
2 ցայց ի ձեռաց նորա։ Եւ յարեաւ Դա-
ւիթ, եւ անց ինքն եւ վեց հարեւր արքն
որ ընդ նմա, եւ գնաց առ Անքուս որ-
3 դի Մաւովքայ՝ արքայ Գեթայ։ Եւ նստաւ
Դաւիթ ընդ Անքուսայ ի Գէթ, ինքն եւ
արք իւր՝ իւրաքանչիւր տամբ իւրով.
եւ Դաւիթ եւ երկոքին կանայք իւր,
Աքինովամ Յեզրայելացի եւ Աբիգեա կին
4 Նաբաղայ Կարմեղացւոյ։ Եւ ազդ եղեւ
Սաւուղայ եթէ փախեաւ Դաւիթ ի Գէթ,
եւ ոչ եւս յաւել խնդրել զնա։
5 Եւ ասէ Դաւիթ ցԱնքուս, Եթէ եգիտ
ծառայ քո շնորհս առաջի աչաց քոց,
տացես ինձ տեղի ի միում քաղաքաց
յանդս, եւ նստայց անդ. եւ ընդէ՞ր նստի-
ցի ծառայ քո ի թագաւորեալ քաղաքի ընդ
6 քեզ։ Եւ ետ նմա Անքուս յաւուր յայնմիկ
զՍիկեղակ. վասն այնորիկ եղեւ Սիկեղակ
7 արքայից Հրէաստանի մինչեւ ցայսօր։ Եւ
եղեւ թիւ աւուրցն զոր նստաւ Դաւիթ
յանդի այլազգեացն"[2]աւուրք չորից ամսոց"։
8 Եւ ելանէր Դաւիթ եւ արքն որ ընդ
նմա էին, եւ սպատակէին ի վերայ [3]ա-
մենայն Գեսուրացւոյն եւ Գեզերացւոյն
եւ Ամաղեկացւոյն. [4]եւ ահա բնակէր
երկիրն ի Գեղամսուրայ յարահոսից
9 պարսպաւորաց մինչեւ ցեգիպտոս"։ Եւ
հարկանէր Դաւիթ զերկիրն, եւ ոչ ապ-
րեցուցանէր զայր եւ զկին. եւ առնոյր
հօտս եւ անդեայս եւ էշս եւ ուղտս եւ
հանդերձս, եւ դառնայր եւ գայր առ Ան-
10 քուս։ Եւ ասէր Անքուս ցԴաւիթ, Ո-
րո՞ւմ կողմն արշաւեցէք այսօր։ Եւ
ասէր Դաւիթ ցԱնքուս, Ի կողմանս հա-
րաւոյ Հրէաստանի, եւ ի կողմանս[5] Յե-
11 րամելի, եւ ի կողմանս[5] Կենեզայ։ Զայր
եւ զկին ոչ [6]ապրեցուցի ածել ի Գէթ.
ասեմ", Գուցէ ազդ լինիցի վմէնջ ի Գէթ,
եւ ասիցեն թէ Զայս ինչ գործէ Դաւիթ։

[1]Եբր. յուսահատ լիցի Սաւուղ ի խնդրելոյ զիս այլ եւս [2]Եբր. մի ամ եւ ամիսք չորք [3]Եբր. [illegible]
[4]Եբր. զի բնակէին նոքա ի վաղուց յերկրին յայնմիկ ի մտից Սուրայ մինչեւ յերկիրն Եգիպտացւոց։
[5]Եբրայեցին յաւելու՝ հարաւոյ, [6]Եբր. ապրեցուցանէր Դաւիթ տանել համբաւ ի Գէթ զի ասէր։

Եւ այս [7]կրաւունք էին" նորա զամենայն
աւուրս որչափ եւ նստաւ Դաւիթ [8]յան-
12 դի այլազգեացն։ Եւ հաւատաց Անքուս
Դաւթի յոյժ, եւ ասէ, [9]Ամաչելով ա-
մաչէ" ի ժողովրդենէ իւրմէ յԻսրայելէ,
եւ եղիցի ինձ ծառայ յաւիտեան։

## Գլ. ԻԸ

1 Եւ եղեւ յաւուրսն յայնոսիկ՝ ժողովե-
ցան այլազգիքն բանակօք իւրեանց ե-
լանել պատերազմել ընդ Իսրայէլի. եւ
ասէ Անքուս ցԴաւիթ, Գիտելով գի-
տասցես, զի ընդ իս ելանելոց ես ի պա-
2 տերազմ, դու եւ արք քո։ Եւ ասէ Դա-
ւիթ ցԱնքուս, Այդպէս լիցի, արդ գի-
տասցես զինչ գործեսցէ ծառայ քո։ Եւ
ասէ Անքուս ցԴաւիթ, Այդպէս լիցի.
անձնապահապես արարից զքեզ զամե-
նայն աւուրս։
3 Եւ Սամուէլ մեռաւ, եւ կոծեցան զնա
ամենայն Իսրայէլ, եւ թաղեցին զնա ի
քաղաքին իւրում յԱրիմաթեմ։ Եւ Սա-
ւուղ եբարձ զվհուկս եւ զգէտս յերկրէ։
4 Եւ գումարեցան այլազգիքն, եւ եկին
բանակեցան ի Սոմամ. եւ ժողովեաց
Սաւուղ զամենայն այր Իսրայէլի, եւ
5 բանակեցան ի Գեղբուէ։ Իբրեւ ետես
Սաւուղ զբանակ այլազգեացն, երկեաւ
6 եւ զարհուրեցաւ սիրտ նորա յոյժ։ Եւ
եհարց Սաւուղ ի Տեառնէ, եւ ոչ արար
նմա պատասխանի Տէր երազովք եւ
7 [10]զուշակութեամբք եւ մարգարէիւք։ Եւ
ասէ Սաւուղ ցծառայս իւր, Խնդրեցէք
ինձ կին մի վհուկ, եւ երթայց առ նա
եւ խնդրեցից նովաւ։ Եւ ասեն ծառայքն
նորա ցնա, Ահա է կին մի վհուկ յԱյենդովր։
8 Եւ ծպտեցաւ Սաւուղ, եւ զգեցաւ այլ
հանդերձս, եւ գնաց ինքն եւ երկու արք
ընդ նմա, եւ եկին առ կինն գիշերի։
Եւ ասէ ցնա, Գիւթեա դու ինձ վհկաւդ,
9 եւ հան ինձ զոր ասացից քեզ։ Եւ ասէ
կինն, Ահա դու ինքնին իսկ գիտես զոր
ինչ արար Սաւուղ, որպէս սատակեաց
զվհուկս եւ զգէտս յերկրէ. եւ արդ ընդ-
է՞ր որսաս զանձն իմ սպանանել զնա։
10 Եւ երդուաւ նմա Սաւուղ ի Տէր եւ ա-
սէ, Կենդանի է Տէր, եթէ պատահեսցի
11 քեզ վնաս ի բանիս յայսմիկ։ Եւ ասէ
կինն, Զո՞ հանից քեզ։ Եւ ասէ, ԶՍա-
մուէլ հան ինձ։

[7]Կամ, էր սովորութիւն [8]Կամ, յերկրին [9]Եբր. Ատելով ատեցաւ [10]Եբր. Ուրիմաւ

12 Եւ ետես կինն զՍամուէլ, եւ աղա-
ղակեաց ի ձայն մեծ. եւ ասէ կինն ցՍա-
ւուղ, Ընդէ՞ր խաբեցեր զիս. եւ դու
13 Սաւուղ ես: Եւ ասէ ցնա արքայ, Մի՛
երկնչիր, ասա զո՞ տեսեր: Եւ ասէ ցնա
կինն, Աստուածս տեսանեմ ելեալս յերկրէ:
14 Եւ ասէ ցնա, [1]Զի՞նչ գիտացեր": Եւ ասէ
ցնա, Այր [2]ուղղորդ ելեալ յերկրէ", եւ
արկեալ զիւրեւ կրկնոց: Եւ ծանեաւ
Սաւուղ եթէ Սամուէլ է նա. եւ անկաւ
ի վերայ երեսաց իւրոց յերկիր, եւ եպագ
15 նմա երկիր: Եւ ասէ Սամուէլ ցՍաւուղ,
Զի՞ ալկեցեր զիս [3]ելանել ինձ": Եւ ասէ
Սաւուղ, Նեղեալ եմ յոյժ, եւ այլազ-
գիք պատերազմին ընդ իս, եւ Աստուած
հեռացաւ յինէն, եւ ոչ լսէ ինձ ոչ
մարգարէիւք, եւ ոչ երազովք. եւ արդ
կոչեցի զքեզ ցուցանել ինձ զինչ գոր-
16 ծեցից: Եւ ասէ Սամուէլ, Զի՞ հարցա-
նես զիս, եւ Տէր հեռացաւ իքէն, եւ
17 եղեւ [4]ընդ ընկերի քում". Եւ արար ընդ
քեզ Տէր որպէս խօսեցաւ յիմ ձեռն. եւ
պատառեսցէ Տէր զթագաւորութիւնդ ի
ձեռաց քոց, եւ տացէ զդա ընկերի քում
18 Դաւթի: Զի ոչ լուար ձայնի Տեառն,
եւ ոչ արարեր զսրտմտութիւն բարկու-
թեան նորա յԱմաղէկ. վասն այնր բանի
արար քեզ Տէր զայդ յաւուր յայսմիկ:
19 Եւ մատնեսցէ Տէր զԻսրայէլ քեւ հան-
դերձ ի ձեռս այլազգեաց, եւ վաղիւ
դու եւ որդիք քո [5]ընդ քեզ անկցին",
եւ զբանակն Իսրայելի տացէ Տէր ի
ձեռս այլազգեաց:
20 Եւ փութացաւ Սաւուղ եւ անկաւ
յանկելեաց ի գետին. եւ զարհուրեցաւ
յոյժ ի բանիցն Սամուէլի, եւ զօրութիւն
ոչ եւս գոյր ի նմա. զի ոչ եկեր հաց
21 զտիւն ողջոյն եւ զգիշերն ամենայն: Եւ
եմուտ կինն առ Սաւուղ եւ ետես զի
տագնապեալ էր յոյժ, եւ ասէ ցնա, Ա-
հա լուաւ աղախին քո ձայնի քում. եւ
եդի զոգի իմ ի ձեռին իմում, եւ ունկնդիր
22 եղէ բանիցն զոր խօսեցար ընդ իս: Եւ
արդ լուր եւ դու ձայնի աղախնոյ քո,
եւ եդից առաջի քո պատառ մի հաց եւ
կերիցես, եւ եղիցի քեզ զօրութիւն. զի
23 երթիցես զճանապարհ քո: Եւ ոչ [6]կա-
մեցաւ ուտել". եւ բռնադատեցին զնա
ծառայքն իւր եւ կինն, եւ լուաւ ձայնի
նոցա, եւ յարեաւ ի գետնոյն եւ նստաւ
24 [7]յաթոռ: Եւ կնոջն մատուցեալ էր որթ մի
ի տան, եւ փութացաւ եզեն զնա. եւ
առ ալեւր, թրեաց, եւ եփեաց բաղարջս.
25 Եւ մատոյց առաջի Սաւուղայ, եւ ա-
ռաջի ծառայից նորա, եւ կերան եւ յա-
րեան գնացին զգիշերն զայն:

Գլ. ԻԹ

1 Եւ ժողովեցին այլազգիքն զամենայն
զբանակս իւրեանց յԱփեկ, եւ բանակե-
ցաւ Իսրայէլ [8]յԱյենդովր Յեզրայելի:
2 Եւ նախարարք այլազգեացն[9] հարիւրա-
ւորօք եւ հազարաւորօք, եւ Դաւիթ եւ
արք իւր երթային յետոյ ընդ Անքուսայ:
3 Եւ ասեն նախարարք այլազգեացն, Ո՞
են [10]դոքա որ անցանենդ": Եւ ասէ Ան-
քուս ցնախարարս այլազգեացն, Ո՞չ դա
է Դաւիթ ծառայ Սաւուղայ արքայի Իս-
րայելի, [11]եւ այս երկու ամք են զի առ
մեզ է", եւ ոչ ինչ գտի ի դմա յօրէ յոր-
մէ հետէ անկաւ ի մեզ մինչեւ ցայսօր:
4 Եւ խժռեցան նմա նախարարք այլազ-
գեացն, եւ ասեն ցնա, Դարձո զայրդ,
եւ երթիցէ ի տեղի իւր ուր կացուցեր
զնա անդ. եւ մի՛ եկեսցէ ընդ մեզ ի պա-
տերազմ, եւ մի՛ լիցի գաւաճան բանա-
կիս. եւ իւ՞ հաճեսցի դա ընդ տեառն իւ-
րում, եթէ ոչ գլխովք արանցդ այդոցիկ:
5 Ո՞չ այդ Դաւիթ է որում նուագէին ի
պարս եւ ասէին, եթէ Եհար Սաւուղ
6 զհազարս եւ Դաւիթ զբեւրս: Եւ կոչեաց
Անքուս զԴաւիթ, եւ ասէ ցնա, Կեն-
դանի է Տէր, զի ուղիղ եւ բարի ես դու
յաչս իմ, եւ մուտ քո եւ ել ի բանակի
աստ ընդ իս. եւ ոչ գտի ի քեզ չարու-
թիւն յօրէ յորմէ հետէ եկիր առ իս մին-
չեւ ցայսօր ժամանակի. եւ յաչս նա-
7 խարարացն ոչ թուիս դու բարւոք. Եւ
արդ դարձիր եւ երթ ի խաղաղութիւն,
եւ ոչ արասցես [12]չարութիւն յաչս նա-
8 խարարաց այլազգեացս: Եւ ասէ Դաւիթ
ցԱնքուս, Զի՞նչ արարի քեզ, եւ զի՞նչ
գտեր ի ծառայի քում յօրէ յորմէ էի ա-
ռաջի քո մինչեւ ցայսօր. զի՞ ոչ գայցեմ
պատերազմել ընդ թշնամիս տեառն իմոյ
9 արքայի: Պատասխանի ետ Անքուս եւ

[1] Եբր. Զի՞նչ են կերպարանք նորա [2] Եբր. ծեր ելեալ [3] Եբր. հանել զիս [4] Կամ, թշնամի քո [5] Եբր. ընդ իս իցէք [6] Եբր. կամեցաւ, եւ ասէ, Ոչ կերայց

[7] Եբր. ի գահոյս [8] Եբր. առ աղբերն [9] Եբրայեցին յաւելու, անցանէին [10] Կամ, Եբրայեցիքդ [11] Եբր. որ եղեւ առ իս այսչափ աւուրս [12] Եբր. չար

ասէ ցԴաւիթ, Գիտեմ զի բարւոք թուիս
դու յաչս իմ իբրեւ զհրեշտակ Աստու-
ծոյ. այլ նախարարք այլազգեացն ասեն,
10 Մի՛ եկեսցէ ընդ մեզ ի պատերազմ: Եւ
արդ կանխեա դու ընդ առաւօտն, դու
եւ ծառայք տեառն քո որ եկեալ են ընդ
քեզ, [1]եւ երթայք ի տեղին յորում կա-
ցուցի զձեզ. եւ բան ինչ յաւութեան
մի՛ դիցես ի սրտի քում, զի հաճոյ ես
դու առաջի իմ." եւ փաղաջարոյց լինի-
ցիք ի ճանապարհ եւ լուսասցի ձեզ եւ
11 գնասջիք: Եւ կանխեաց Դաւիթ եւ արք
իւր գնալ ընդ առաւօտն [2]եւ պահել զեր-
կիր" այլազգեացն. եւ այլազգիքն ելին
[3]պատերազմել ընդ Իսրայելի":

ԳԼ. Լ

1 Եւ եղեւ ընդ մտանել Դաւթի եւ ա-
րանց նորա ի Սիկեղակ յաւուրն երրոր-
դի, եւ Ամաղէկ ասպատակեաց ի հա-
րաւակողմն եւ ի Սիկեղակ. եւ եհար զՍի-
2 կեղակ եւ այրեաց զնա հրով, Եւ զե-
րեաց զկանայս [1]եւ զամենայն ինչ" որ
ի նմա ի փոքուէ մինչեւ ցմեծ. եւ ոչ
սպանին զայր [1]եւ զկին", այլ վերեցին
3 եւ գնացին զճանապարհ իւրեանց: Եւ
եկն Դաւիթ եւ արք իւր ի քաղաքն. եւ
ահա այրեցեալ էր քաղաքն, եւ կանայք
նոցա եւ ուստերք եւ դստերք իւրեանց
4 գերեալք: Եւ ամբարձին Դաւիթ եւ արք
նորա զձայնս իւրեանց եւ լացին, մին-
չեւ ոչ եւս գոյր ի նոսա զօրութիւն լա-
5 լոյ: Եւ երկոքին կանայքն Դաւթի գե-
րեցան, Աքինոամ Յեզրայելացի եւ Ա-
6 բիգեա կին Նաբաղու Կարմեղացւոյ: Եւ
նեղեցաւ Դաւիթ յոյժ, զի ասաց ժողո-
վուրդն քարկոծել զնա. զի դառնացեալ
էր ոգի ամենայն ժողովրդեանն իւրա-
քանչիւր ի վերայ ուստերաց եւ դստե-
րաց իւրեանց: Եւ զօրացաւ Դաւիթ ի
7 Տէր Աստուած իւր: Եւ ասէ Դաւիթ ցԱ-
բիաթար քահանայ որդի Աբիմելեքայ,
Մատո զեփուդ: Եւ մատոյց Աբիաթար
8 զեփուդն առ Դաւիթ: Եւ եհարց Դաւիթ ի
Տեառնէ եւ ասէ, Պնդեցա՞յց զկնի [4]զնդու-
րայն այնորիկ, եթէ հասանիցե՞մ նոցա:
Եւ ասէ ցնա Տէր, Պնդեաց եւ հասանելով
հասանես, եւ թափելով թափեսցես:
9 Եւ գնաց Դաւիթ եւ [5]չորեքհարիւր արքն
որ ընդ նմա, եւ եկին մինչեւ ցհեղե-
ղատն Բոսորայ. եւ [6]աւելորդքն զտեղի
10 առին: Եւ պնդեցաւ Դաւիթ չորեքհա-
րեւր արամբ. եւ երկերիւր այր մնա-
ցին՝ [7]որք նստան" յայնկոյս հեղեղատին
11 Բոսորայ: Եւ գտին այր մի Եգիպտացի
յանդին եւ կալան զնա, եւ ածին առ
Դաւիթ [1]յանդն. եւ ետուն նմա հաց եւ
12 կերաւ, եւ արբուցին նմա ջուր. Եւ ե-
տուն նմա կտոր մի պաղատտաց եւ եր-
կուս չամչեայս, եւ կերաւ, եւ հաս-
տատեցաւ անդու ոգի նորա. քանզի չէր
կերեալ հաց եւ ոչ արբեալ ջուր զերիս
13 տիւս եւ զերիս գիշերս: Եւ ասէ ցնա
Դաւիթ, Ո՞յր ես դու, եւ ուստի՞ ես:
Եւ ասէ պատանեակն, Եգիպտացի եմ
ես ծառայ առն Ամաղեկացւոյ, եւ եթող
զիս տէր իմ. զի նքողեցայ ես այս եր-
14 րորդ օր. Եւ մեք ասպատակեցաք ի
կողմանս հարաւոյ Քերեթեայ, եւ ի
կողմանս Հրէաստանի, եւ ի հարաւա-
կողմ Քաղեբայ, եւ զՍիկեղակ այրեցաք
15 հրով: Եւ ասէ ցնա Դաւիթ, Եթէ ի-
ջուցանիցե՞ս զիս [8]ի գնդդուրն յայն: Եւ
ասէ ցնա Եգիպտացին, Երդուիր ինձ[9] ե-
թէ ոչ սպանցես զիս, եւ ոչ մատնես-
ցես զիս ի ձեռս տեառն իմոյ, եւ իջուցից
զքեզ [8]ի՛ վեղդուրն: [1]Եւ երդուաւ նմա"
16 Եւ իջոյց զնա անդր. եւ ահա նոքա
ցրուեալ էին ընդ երեսս ամենայն երկ-
րին, ուտէին եւ ըմպէին եւ տօնէին ա-
մենայն աւարօքն մեծամեծօք զոր ա-
ռին յերկրէն այլազգեաց եւ յերկրէն Յու-
17 դայ: [1]Եւ եհաս ի վերայ նոցա Դաւիթ",
եւ եհար զնոսա Դաւիթ [10]յելանելոյ ա-
րուսեկին մինչեւ ցերեկոյ եւ ի վաղիւ
անդր", եւ ոչ ապրեցաւ ի նոցանէ այր.
բայց միայն պատանեակք չորեքհարեւր
18 հեծան յուղտս եւ փախեան: Եւ թա-
փեաց Դաւիթ զամենայն ինչ զոր առին
Ամաղեկացիքն, եւ զերկոսին կանայս
19 իւր թափեաց Դաւիթ: Եւ ոչ սխալե-
ցաւ ի նոցանէ ի փոքուէ մինչեւ ցմեծ,
եւ յուստերաց եւ ի դստերաց եւ յաւա-
րէն մինչեւ ցամենայն ինչ զոր առին ի
20 նոցանէ, զամենայն դարձոյց Դաւիթ: Եւ
ա՛ռ Դաւիթ զամենայն հօտս եւ զանդեայս,
եւ [11]տանէր առաջի աւարին. եւ [12]աւարին
անուն կոչէր" թէ Այս աւար Դաւթի է:

[1] Եբր. պալատ [2] Եբր. դառնալ յերկիր [3] Եբր. յՅեզրայէլ [4] Եբր. գնդին [5] Եբր. վեցհարիւր

[6] Եբր. որ մնացինն՝ [7] Եբր. լքեալք անցանել [8] Եբր. ի գունդն [9] Եբր. յայերէն յաւելու. յԱստուած [10] Եբր. յայգուէ մինչեւ ցերեկոյ վաղուին [11] Եբր. տանէին [12] Եբր. ասէին

21 Եւ եկն Դաւիթ առ երկերիւրսն լքեալս
յերթալոյ զկնի Դաւթի, եւ նստոյց զնո-
սա ի հեղեղատին Բոսորայ. եւ ելին ընդ
առաջ Դաւթի եւ ընդ առաջ զօրուն որ
ընդ նմա. եւ մատեաւ Դաւիթ առ զօրն,
եւ եհարց զողջունէ նորա ի խաղաղու-
22 թիւն։ Եւ պատասխանի ետուն նմա ա-
մենայն արք ժանտք եւ անզգամք յա-
րանց պատերազմողաց որ երթեալ էին
ընդ Դաւթի, եւ ասեն եթէ Զի ոչ ե-
կին հետամուտ ընդ մեզ, ոչ տացուք
զոյգս յաւարէ անտի զոր թափեցաք.
բայց եթէ զիւրաքանչիւր զկին եւ զոր-
23 դիս առցեն եւ գնասցեն ի բաց։ Եւ ա-
սէ Դաւիթ, Մի՛ արասջիք այդպէս, եղ-
բարք իմ, յետ մատնելոյ զնոսա մեզ
Տեառն եւ պահելոյ զմեզ. եւ մատնեաց
Տէր ի ձեռս մեր [1]զգնդագունդն եկեալ ի
24 վերայ մեր. Եւ ո՞ անսասցէ բանիցդ ձե-
րոց այդոցիկ, զի ոչինչ են ընդհատ ի
ձէնջ. քանզի ըստ մասին երթելոյն ի պա-
տերազմ, նոյնպէս եղիցի մասն վանա-
պանին. ըստ նմին օրինակի բաժանես-
25 ցեն։ Եւ եղեւ յօրէ յայնմանէ եւ անդր
իբրեւ օրէնք եւ իրաւունք ի մէջ Իսրա-
յէլի մինչեւ ցայսօր։
26 Եւ եկն Դաւիթ ի Սիկեղակ, եւ առա-
քեաց յաւարէ անտի ծերոցն Յուդայ [2]եւ
ընկերաց իւրոց, եւ ասէ, Ահա ձեզ օրհ-
նութիւն յաւարէ թշնամեաց Տեառն.
27 [3]Որ ի Բեթէլդ էք" եւ յՌամաթ հարա-
28 ւոյ, Եւ որք յԵթեր եւ յԱրոյեր, եւ որք
29 յԻսթեմովթ, եւ որք յԵսթեմա, Եւ
որք յԿիրաքէլ, եւ որք ի քաղաքս Յերե-
մելացւոյն, եւ որք ի քաղաքս Կենեց-
30 ւոյն, Որք ի Հռամա, եւ որք ի Բովրա-
31 սան, եւ որք յԱթաք, Եւ որք ի Քեբ-
րոն, եւ որք յամենայն տեղիս ընդ որ
շրջեցաւ Դաւիթ ինքն եւ արք իւր։

## ԳԼ. ԼԱ.

1 Եւ այլազգիքն պատերազմէին ընդ Իս-
րայէլի. եւ փախեան արք Իսրայէլի յե-
րեսաց այլազգեացն, եւ անկանէին վի-
2 րաւորք ի լերինն Գեղբուայ։ Եւ հասին
այլազգիքն ի Սաւուղ եւ յորդիս նորա,
եւ հարին այլազգիքն զՅովնաթան եւ
զԱբինադաբ եւ զՄեղքիսուէ զորդիս
3 Սաւուղայ, Եւ ծանրացաւ պատերազմն
ի վերայ Սաւուղայ, եւ գտին զնա արք
կորովիք աղեղնաւորք, եւ վիրաւորե-
4 ցաւ [4]ընդ կարաւանդսն ի նետքս"։ Եւ
ասէ Սաւուղ ցկապարճակիրն իւր, Մեր-
կեա զսուր քո եւ խոցեա զիս նովաւ.
զուցէ գայցեն անթլփատքն եւ խոցո-
տիցեն զիս, եւ խաղայցեն զինեւ։ Եւ
ոչ կամեցաւ կապարճակիրն, քանզի եր-
կեաւ յոյժ։ Եւ առ Սաւուղ զսուսերն
5 իւր եւ անկաւ ի վերայ նորա։ Իբրեւ
ետես կապարճակիրն թէ մեռաւ Սաւուղ,
անկաւ եւ նա ի վերայ սուսերին իւրոյ
6 եւ մեռաւ ընդ նմա։ Եւ մեռաւ Սաւուղ
եւ երեքեան որդիք նորա, եւ կապար-
ճակիրն իւր, եւ ամենայն արք նորա
յաւուր յայնմիկ ի միասին։
7 Եւ իբրեւ տեսին արք Իսրայէլի որ
յայնկոյս հովտացն եւ որ յայնկոյս Յոր-
դանանու, եթէ փախեան արք Իսրայէ-
լի, եւ թէ մեռաւ Սաւուղ եւ որդիք նո-
րա, թողին զքաղաքս իւրեանց եւ փա-
խեան, եւ եկին այլազգիքն եւ բնակե-
ցան ի նոսա։
8 Եւ եղեւ ի վաղիւ անդր եկին այլազ-
գիքն մերկացուցանել զդիականսն. եւ
գտին զՍաւուղ եւ զերիս որդիս նորա
9 անկեալս ի լերինն Գեղբուայ։ [5]Դարձու-
ցին զնա, եւ մերկացուցին զհանդերձ
նորա. եւ հատին զգլուխ" նորա. եւ ա-
ռաքեցին յերկիրն այլազգեաց շուրջա-
նակի աւետաւորս ի կուռս իւրեանց եւ
10 ի ժողովուրդն։ Եւ եդին զկարասին նո-
րա յԱստարտեանն, եւ [6]զմարմին նորա"
կախեցին զպարսպէն Բեթսանայ։
11 Եւ լուան [7]զնոցանէն բնակիչք Յաբի-
սայ Գաղաադացւոց զոր ինչ արարին այ-
12 լազգիքն ընդ Սաւուղ. Եւ յարեան ա-
մենայն այր զօրութեան եւ գնացին զգի-
շերն ամենայն, եւ առին զմարմինն Սա-
ւուղայ եւ զմարմինն Յովնաթանու որդ-
ւոյ նորա ի պարսպէն Բեթսանայ, եւ
բերին զնոսա Յաբիս, եւ այրեցին զնո-
13 սա անդ։ Եւ առին զոսկերս նոցա եւ
թաղեցին զնոսա ընդ [8]անդեւն Յաբի-
սայ", եւ պահեցին զեւթն օր։

---

[1] Եբր. զգունդն [2] Յեբր. պակասէ [3] Եբր. Որք էին ի Բեթէլ

[4] Եբր. յաղեղնաւորացն [5] Եբր. Եւ հատին զգլուխ նորա եւ մերկացուցին զզէնս [6] Եբր. զմարմին նորա [7] Եբր. զնմանէ [8] Եբր. ծառովն ի Յաբիս

# ԳԼՈՒԽՔ ԵՐԿՐՈՐԴ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

# ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

## ԵՐԿՐՈՐԴ

### ԳԼՈՒԽ Ա

1 Եւ եղեւ յետ մահուանն Սաւուղայ,
եւ Դաւիթ դարձաւ ի հարկանելոյ
զԱմաղէկ, եւ նստաւ Դաւիթ ի Սիկե-
2 ղակ աւուրս երկուս։ Եւ եղեւ [1]յետ ա-
ւուրն երկրորդի՝՝, եւ ահա այր եհաս ի
բանակէ զօրուն Սաւուղայ, եւ հանդերձք
իւր պատառեալք, եւ հող զգլխով իւ-
րով. եւ եղեւ ի մտանել նորա առ Դա-
ւիթ, անկաւ յերկիր եւ երկիր եպագ նմա։
3 Եւ ասէ ցնա Դաւիթ, Ուստի՞ գաս դու։
Եւ ասէ ցնա, Ի բանակէն Իսրայելի զեր-
4 ծեալ եմ ես։ Եւ ասէ ցնա Դաւիթ, Զի՞նչ
զրոյց է, պատմեա ինձ։ Եւ ասէ, Փա-
խեաւ ժողովուրդն ի պատերազմէն, եւ
անկան բազումք ի ժողովրդենէն եւ մե-
ռան. եւ Սաւուղ եւ Յովնաթան[2] մե-
5 ռան։ Եւ ասէ Դաւիթ ցպատանին որ
պատմեաց նմա, Զիա՞րդ գիտես եթէ մե-
ռաւ Սաւուղ եւ Յովնաթան որդի նորա։
6 Եւ ասէ պատանին որ պատմեաց նմա,
Դիպելով դիպեցայ ի լերինն Գեղբուայ,
եւ ահա Սաւուղ յեցեալ կայր ի նիզակն
իւր. եւ ահա կառք եւ սպայանք հեծե-
7 լոց գումարեցան ի նա։ Եւ հայեցաւ ի
թիկունս իւր եւ ետես զիս, եւ կոչեաց
8 զիս. եւ ասեմ, Ահաւասիկ եմ ես։ Եւ ա-
սէ ցիս, Ո՞վ ես դու։ Եւ ասեմ, Ամա-
9 ղեկացի եմ ես։ Եւ ասէ ցիս, Արի ի վե-
րայ իմ եւ սպան զիս, զի կալաւ զիս
[3]մութ անհնարին՝՝, մինչ զեռ ամենայն
10 շունչ իմ յիս է։ Եւ յարեայ ի վերայ նո-
րա եւ սպանի զնա. զի գիտէի թէ ոչ է
ապրելոց, յետ անկանելոյն նորա. եւ
առի զթագն ի գլխոյ նորա եւ զապա-
րանջանս ի բազկէ նորա, եւ բերի զնո-
11 սա տեառն իմում այսր։ Եւ բուռն եհար
Դաւիթ զհանդերձից իւրոց եւ պատա-
ռեաց զնոսա. եւ ամենայն արք որ ընդ

[1]Եբր. յաւուրն երրորդի  [2]Եբրայեցին յաւելու, որդի նորա  [3]Եբր. տագնապ, կամ, թմբրութիւն

նմա՝ պատառեցին զհանդերձս իւրեանց։
12 Եւ կոծեցան եւ պահեցին եւ լացին մին-
չեւ ցընդերեկս ի վերայ Սաւուղայ եւ
Յովնաթանու որդւոյ նորա, եւ ի վերայ
ժողովրդեանն [4]Յուդայ, եւ ի վերայ տանն
Իսրայելի զի հարան սրով։
13 Եւ ասէ Դաւիթ ցպատանին որ պատ-
մեաց նմա, Ուստի՞ ես դու։ Եւ ասէ,
Որդի առն պանդխտի Ամաղեկացւոյ եմ
14 ես։ Ասէ ցնա Դաւիթ, Եւ զիա՞րդ ոչ
երկեար ձգել զձեռն քո [5]ապականել զօ-
15 ծեալն Տեառն։ Եւ կոչեաց Դաւիթ զմի
ի մանկտւոյն եւ ասէ, Մատիր պատա-
16 հեա զմա. եւ եհար զնա եւ մեռաւ։ Եւ
ասէ ցնա Դաւիթ, Արիւն քո ի գլուխ
քո. զի բերան քո խօսեցաւ զքէն եւ
ասէ, թէ Ես սպանի զօծեալն Տեառն։
17 Եւ ողբաց Դաւիթ զողբս զայս ի վե-
րայ Սաւուղայ եւ ի վերայ Յովնաթանու
18 որդւոյ նորա. Եւ ասաց Դաւիթ ուսուցա-
նել որդւոցն Յուդայ աղեղնաւորութիւն.
եւ ահա գրեալ է ի գիրս Ուղղութեան։
19 [6]Արձանացիր Իսրայէլ, ի վերայ բլրոցն
ի բարձունս քո վիրաւորաց՝՝. զիա՞րդ ան-
20 կան զօրաւորքն։ Մի՛ պատմէք ի Գէթ,
եւ մի՛ տայք զայդ աւետիս յելս Ասկա-
ղոնի. զի մի՛ ուրախ լիցին դստերք
այլազգեացն եւ մի՛ ցնծասցեն դստերք
21 անթլփատիցն։ Լերինք Գեղբուայ, մի՛
իջցէ ի ձեզ ցօղ, եւ մի՛ եկեսցէ ի վերայ
ձեր անձրեւ, անդաստանք պտղոց, զի
անդ [7]ապականեցաւ ասպար զօրաւորաց.
22 վահանն Սաւուղայ ոչ օծաւ իւղով։ Յա-
րենէ վիրաւորաց եւ ի ճարպոյ զօրաւո-
րաց աղեղն Յովնաթանու ոչ դարձաւ
ունայն յետս, եւ սուրն Սաւուղայ ոչ
23 ամփոփեցաւ դատարկացեալ։ Սաւուղ
եւ Յովնաթան սիրելիք եւ գեղեցիկք եւ
վայելուչք, չմեկնեալք ի կենդանութեան

[4]Եբր. Տեառն  [5]Կամ, կորուսանել  [6]Եբր. Ով վայելչութիւնդ Իսրայելի, ի վերայ բլրոց քոց վիրաւորեալ է  [7]Եբր. ընկեցաւ

իւրեանց, եւ ոչ մեկնեցան ի մահուան
իւրեանց. թեթեւագոյնք քան զարծուիս,
զօրացան առաւել քան զառիւծունս։
24 Դստերք Իսրայելի, լացէք ի վերայ Սա-
ւուղայ, լացէք ի վերայ նորա որ զգե-
ցուցանէր ձեզ կարմիրս՝ հանդերձ զար-
դուն ձերով, որ արկանէր զարդս ոսկւոյ
25 ի վերայ հանդերձից ձերոց։ Զիա՞րդ ան-
կան զօրաւորքն ի մէջ պատերազմի. Յով-
նաթան, ի վերայ բարձանց քոց վիրաւոր։
26 Ցաւէ ինձ ի վերայ քո, եղբայր իմ Յով-
նաթան. գեղեցկացար ինձ յոյժ. զար-
մանալի եղեւ սէր քո ինձ քան զսէր կա-
27 նանց։ Զիա՞րդ անկան զօրաւորքն, եւ
կորեան անօթքն պատերազմականք։

## Գլ. Բ

1 Եւ եղեւ յետ այնորիկ եհարց Դա-
ւիթ ի Տեառնէ եւ ասէ, Եթէ ելանի-
ցե՞մ ի մի ի քաղաքացն Յուդայ։ Եւ ա-
սէ ցնա Տէր, Ել։ Եւ ասէ Դաւիթ, Յո՞
2 ելից։ Եւ ասէ, Ի Քեբրոն։ Եւ ել Դա-
ւիթ ի Քեբրոն, եւ երկոքին կանայք
նորա՝ Աքինովամ Յեզրայելացի եւ Աբի-
3 գեա կին Նաբաղու Կարմեղացւոյ։ Եւ
արքն զորս եհան Դաւիթ իւրաքանչիւր
տամբ իւրով. եւ բնակէին ի քաղաքին
4 Քեբրոնի։ Եւ եկին արք Հրէաստանի եւ
օծին անդ զԴաւիթ թագաւոր ի վերայ
տանն Յուդայ։ Եւ պատմեցին Դաւթայ
եւ ասեն, եթէ Արք Յաբիսայ Գաղաա-
5 դացւոյ թաղեցին զՍաւուղ։ Եւ առա-
քեաց Դաւիթ հրեշտակս առ [1]առաջնորդս
Յաբիս Գաղաադացւոյն, եւ ասէ ցնոսա
Դաւիթ, Օրհնեալ էք դուք ի Տեառնէ,
զի արարէք դուք զգութն զայն ի վե-
րայ տեառն ձերոյ Սաւուղայ [2]օծելոյ
Տեառն, եւ թաղեցէք զնա եւ զՅով-
6 նաթան զորդի նորա"։ Եւ արդ արասցէ
Տէր ընդ ձեզ ողորմութիւն եւ ճշմար-
տութիւն. եւ ես հատուցից ձեզ ընդ
բարութեանն այնորիկ զի արարէք զբանն
7 զայն։ Եւ արդ զօրասցին ձեռք ձեր, եւ
լերուք յորդիս զօրութեան. զի մեռաւ
տէրն ձեր Սաւուղ, եւ զիս օծ տունս
Յուդայ իւրեանց ի թագաւոր։
8 Եւ Աբեններ որդի Ներեայ զօրավար Սա-
ւուղայ առ զՅեբուսթէ զորդի Սաւու-
9 ղայ, եւ տարաւ զնա [3]ի բանակն, Եւ
թագաւորեցոյց զնա ի վերայ Գաղաա-
դաստանի եւ ի վերայ Թասիրայ եւ ի
վերայ Յեզրայելի եւ ի վերայ Եփրեմի
եւ ի վերայ Բենիամենի, եւ ի վերայ ա-
10 մենայն Իսրայելի։ Եւ էր ամաց քառա-
նից Յեբուսթէ որդի Սաւուղայ յորժամ
թագաւորեաց ի վերայ Իսրայելի, եւ եր-
կուս ամս թագաւորեաց. բայց ի տանէն
11 Յուդայ՝ որ էին զհետ Դաւթի։ Եւ եղեն
աւուրք զորս թագաւորեաց Դաւիթ ի
Քեբրոն ի վերայ տանն Յուդայ՝ ամք
եւթն եւ ամիսք վեց։
12 Եւ ել Աբեններ որդի Ներեայ եւ ծա-
ռայք Յեբուսթեայ որդւոյ Սաւուղայ [4]ի
13 բանակացն ի Գաբաւոն։ Եւ Յովաբ որ-
դի Շարուհեայ եւ ծառայք Դաւթի ելին
ի Քեբրոնէ, եւ դիպեցան միմեանց ի
վերայ աղբերն Գաբաւոնի. եւ նստան
նոքա անտի աղբերն Գաբաւոնի, եւ սո-
14 քա աստի։ Եւ ասէ Աբեններ ցՅովաբ,
Յարիցեն մանկտիդ եւ խաղասցեն ա-
ռաջի մեր. եւ ասէ Յովաբ, Յարիցեն։
15 Եւ յարեան, եւ անցին թուով ի ման-
կանցն Բենիամենի երկոտասանք, Յե-
բուսթեայ որդւոյ Սաւուղայ. եւ ի ման-
16 կանցն Դաւթի երկոտասանք. Եւ կալան
այր իւրաքանչիւր ձեռամբ զգլխոյ ընկե-
րի իւրոյ, եւ սուր ի կողս ընկերի իւրոյ.
եւ անկէն անկանէին [5]եւ մեռանէին".
եւ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ
Վիճակ դաւաճանաց, որ է ի Գաբաւոն։
17 Եւ եղեւ պատերազմ խիստ յոյժ յա-
ւուր յայնմիկ. եւ պարտեցաւ Աբեններ
եւ արք Իսրայելի առաջի ծառայիցն Դաւ-
18 թի։ Եւ անդ էին երեք որդիքն Շարու-
հեայ, Յովաբ եւ Աբեսա եւ Ասայէլ.
եւ Ասայէլ թեթեւ էր ոտիւք իբրեւ զմի
19 յայծեմանց ի դաշտի։ Եւ պնդեցաւ Ա-
սայէլ զհետ Աբեններեայ, եւ ոչ խոտո-
րեցաւ երթալ յաջ եւ ոչ յահեակ ի հե-
20 տոց Աբեններեայ։ Եւ հայեցաւ Աբեն-
ներ ի թիկունս իւր եւ ասէ, Եթէ դո՞ւ
21 իցես Ասայէլ։ Եւ ասէ, Ես եմ։ Եւ ա-
սէ ցնա Աբեններ, Խոտորեա դու յաջ
կամ յահեակ, եւ կալ քեզ զմի ի մանկտ-
ւոյդ, եւ առ դու քեզ զպատառազինու-
թիւն նորա. եւ ոչ կամեցաւ Ասայէլ
22 խոտորել ի հետոց նորա։ Եւ յաւել եւս
Աբեններ ասել ցԱսայէլ, Ի բաց կաց յի-
նէն, զի մի՛ հարից զքեզ ընդ գետին.
եւ զիա՞րդ ամբարձից զերեսս իմ առ Յո-
վաբ, [6]եւ ո՞ւր լինիցի այն. դարձիր
23 առ Յովաբ" եղբայր քո։ Եւ ոչ կամե-

[1] Եբր. առս [2] Եբր.՝ եւ թաղեցէք զնա [3] Եբր. ի Մանայիմ [4] Եբր. ի Մանայիմայ [5] Եբր. միանգամայն [6] Եբր. գ—ի—ն

ցաւ թափել. եւ եհար զնա Աբեններ
[1]նիզակաւն ընդ մանկունսն, եւ ել նի-
զակն ընդ [2]զկառ նորա, եւ անկաւ ան-
դէն եւ մեռաւ ի ներքոյ նորա. եւ լի-
նէր որ միանգամ գայր յանդին յայն ուր
անկաւ Ասայէլ եւ մեռաւ՝ զանգի առնոյր։
24 Եւ պնդեցան Յովաբ եւ Աբեսսա զհետ
Աբեններեայ. եւ արեւն մտանէր, եւ նոքա
մտին մինչեւ ցբլուրն Ամմանայ որ է
յանդիման Գայեայ, ընդ ճանապարհ ա-
նապատին Գաբաւոնի։
25 Եւ ժողովեցան որդիքն Բենիամենի
զհետ Աբեններեայ, եւ կացին ի վերայ
26 բլրոյ միոյ։ Եւ կոչեաց Աբեններ զՅո-
վաբ եւ ասէ, Միթէ յաղթել ուտիցէ
սուր, կամ թէ ո՞չ գիտիցես զի դառ-
նութիւն լինի վախճանն. մինչեւ ցե՞րբ
ոչ ասիցես ժողովրդեանն դառնալ ի հե-
27 տոց եղբարց իւրեանց։ Եւ ասէ Յովաբ,
Կենդանի է Տէր, զի եթէ քո չէր խօ-
սեցեալ, յայգուէ իսկ [3]կլանէր ամբոխ
իւրաքանչիւր զհետ եղբօր իւրոյ։
28 Եւ փող եհար Յովաբ, եւ [4]մեկնեցան
ժողովուրդն ամենայն, եւ ոչ եւս պնդե-
ցան զհետ Իսրայելի, եւ ոչ եւս յաւե-
29 լին պատերազմել։ Եւ Աբեններ եւ արք
նորա գնացին ընդ [5]արեւմտս զգիշերն
զայն ողջոյն, եւ անցին ընդ Յորդանան
եւ շրջեցան ընդ ամենայն [6]ձգեալն, եւ ե-
30 կին ի բանակն՚։ Եւ Յովաբ դարձաւ
յԱբեններեայ, եւ ժողովեաց զամենայն
ժողովուրդն. եւ հանդէս եղեւ ծառա-
յիցն Դաւթի որ կոտորեցան՝ ինն եւ տասն
31 այր, եւ Ասայէլ. Եւ ծառայքն Դաւթի
հարին յորդւոցն Բենիամենի եւ յարանց
Աբեններեայ երեք հարեւր եւ վաթսուն
32 այր[7]։ Եւ բարձին զԱսայէլ եւ թաղեցին
զնա ի գերեզմանի հօր իւրոյ ի Բեթղե-
հեմ. եւ [8]գնացին Յովաբ եւ արք նո-
րա, եւ լուսացաւ նոցա ի Քեբրոն։

ԳԼ. Գ

1 Եւ էր պատերազմ սաստիկ ի մէջ տանն
Սաւուղայ եւ ի մէջ տանն Դաւթի. եւ
[9]տունն Դաւթի՚ երթայր եւ զօրանայր,
եւ տունն Սաւուղայ երթայր եւ տկա-
րանայր։

2 Եւ ծնան Դաւթի որդիք ի Քեբրոն.
անդրանիկ նորա՝ Ամնոն յԱքինովամայ
3 Յեզրայելացւոյ, Եւ երկրորդ նորա՝ [10]Դա-
լուիա, յԱբիգեայ՚ Կարմեղացւոյ, եւ եր-
րորդ՝ Աբեսողոմ, ի Մաաքեայ դստերէ
4 Թողմեայ արքայի Գեսուրայ, Եւ չոր-
րորդ՝ Ադոնիա, որդի Ագգիթայ, եւ հին-
գերորդ՝ Սափատիա, որդի Աբիտաղայ,
5 Եւ վեցերորդ՝ Յեթրամ, յԵգղաթայ կնոջէ
Դաւթի. սոքա ծնան Դաւթի ի Քեբրոն։
6 Եւ եղեւ ի լինել պատերազմին ի մէջ
տանն Սաւուղայ եւ ի մէջ տանն Դաւ-
թի, եւ Աբեններ ունէր զտունն Սա-
7 ւուղայ։ Եւ Սաւուղայ էր հարճ մի, որում
անուն էր Ռեսփա, դուստր Յուղայ։ Եւ
ասէ Յեբուսթէ որդի Սաւուղայ ցԱբեններ,
Ընդէ՞ր մտանես դու առ հարճ հօր իմոյ։
8 Եւ բարկացաւ Աբեններ յոյժ վասն բա-
նին Յեբուսթեայ, եւ ասէ ցնա Աբեն-
ներ, Միթէ շան գլո՞ւխ իցեմ ես, որ ա-
րարի ողորմութիւն այսօր ի վերայ տանն
Սաւուղայ հօր քո, եւ ի վերայ եղբարց
եւ ի վերայ բարեկամաց, եւ ոչ [11]եղէ
անձնատուր ի տունն՚ Դաւթի. եւ
9 խնդրես յինէն այսօր վրէժ կնոջ միոյ։ Օն
եւ օն արասցէ Աստուած Աբեններայ եւ
օն եւ օն յաւելցէ նմա, եթէ ոչ որպէս երդ-
ուաւ Տէր Դաւթի, այնպէս արարից նմա.
10 Բառնալ զթագաւորութիւնն [12]Սաւու-
ղայ, եւ կանգնել զթագաւորութիւնն
Դաւթի ի վերայ Իսրայելի եւ ի վերայ
11 Յուդայ ի Դանայ մինչեւ ցԲերսաբէէ։ Եւ
ոչ եւս կարաց Յեբուսթէ տալ պատաս-
խանի Աբեններայ բան մի յերկիւղէն։
12 Եւ Առաքեաց Աբեններ հրեշտակս առ
Դաւիթ [13]ի Թեսաղմու երկիր՝ առ ժա-
մայն՚. եւ ասէ, Ուխտեա ընդ իս զուխտ
քո, եւ ահա ձեռն իմ ընդ քեզ, դար-
ձուցանել առ քեզ զամենայն տունն Իս-
13 րայելի։ Եւ ասէ Դաւիթ, Բարւոք է.
ես ուխտեցից ընդ քեզ ուխտ. բայց բան
մի ես խնդրեմ ի քէն, մի՛ տեսցես զերեսս
իմ, եթէ ոչ ածցես զՄեղքող դուստր
Սաւուղայ ի գալն քում տեսանել զերեսս
14 իմ։ Եւ առաքեաց Դաւիթ առ Յեբուս-
թէ որդի Սաւուղայ հրեշտակս եւ ասէ,
Տուր ցիս զկին իմ զՄեղքող, զոր առի
ես ընդ հարեւր անթլփատութեանց այլ-

[1] Ոմն. թիկամբ նիզակին [2] Ոմն. քամակ [3] Ա. յո- բնք՝ մեկնէր [4] Ոմն. զտեղի առ [5] Ոմն. դաշտն [6] Ոմն. Բեթրան, եւ եկին ի Մանայիմ [7] Ոմն. ջեւջէն յարեւելս, որք մնան [8] Ոմն. գնացին զգի- շերն ողջոյն [9] Ոմն. Դաւիթ

[10] Ոմն. Քիղաբ յԱբիգեայ, ի կնոջէն Նաբաղայ [11] Ոմն. մատնեցի զքեզ ի ձեռս [12] Ոմն. ի տանէն Սաւուղայ [13] Ոմն. յիւրմէ կուսէ, եւ ասէ. Ո՞յր է երկիրդ

15 ազգեացն ։ Եւ առաքեաց Յեբուսթէ եւ
առ զնա յառնէ իւրմէ Փաղտիելէ որդւոյ
16 Սեղղայ։ Եւ երթայր այր նորա զհետ նորա
եւ լայր մինչեւ ցԲարակիմ ։ Եւ ասէ ցնա
Աբեններ, Երթ դարձիր. եւ դարձաւ ։
17 Եւ խօսեցաւ Աբեններ ընդ ծերս Իս-
րայելի եւ ասէ, Երէկ եւ եռանդ խնդրէիք
18 զԴաւիթ թագաւորել ի վերայ ձեր. Եւ
արդ արարէք, զի Տէր խօսեցաւ վասն
Դաւթի եւ ասէ, Ձեռամբ ծառայի
իմոյ Դաւթի փրկեցից զԻսրայէլ ի ձե-
ռաց այլազգեացն եւ ի ձեռաց ամենայն
19 թշնամեաց իւրեանց ։ Եւ խօսեցաւ Ա-
բեններ յականջս Բենիամենի. եւ գնաց
Աբեններ խօսել յականջս Դաւթի ի Քեբ-
րոն զամենայն ինչ որ հաճոյ թուեցաւ
յաչս Իսրայելի, եւ յաչս ամենայն տանն
20 Բենիամենի ։ Եւ եկն Աբեններ առ Դա-
ւիթ ի Քեբրոն, եւ ընդ նմա քսան այր ։
Եւ արար Դաւիթ Աբեններայ եւ արանցն
21 որ ընդ նմա խրախութիւն ։ Եւ ասէ Ա-
բեններ ցԴաւիթ, Յարեայց եւ գնացից
եւ ժողովեցից առ տէր իմ արքայ զա-
մենայն Իսրայէլ, եւ [1]ուխտեսցին ընդ
քեզ ուխտ, եւ թագաւորեսցես ի վե-
րայ [2]ամենեցուն որոց" ցանկայ անձն
քո. եւ առաքեաց Դաւիթ զԱբեններ,
եւ գնաց խաղաղութեամբ ։
22 Եւ ահա ծառայք Դաւթի եւ Յովաբ
եկին յասպատակէ, եւ աւար բազում
ածին ընդ իւրեանս. եւ [3]Յովաբ չէր
ընդ Դաւթի ի Քեբրոն [4]յորժամ արձա-
կեաց զնա եւ գնաց խաղաղութեամբ ։
23 Եւ Յովաբ եւ ամենայն զօր նորա եկին.
եւ ազդ եղեւ Յովաբայ եւ ասեն, Եկն
Աբեններ որդի Ներեայ առ [5]Դաւիթ,
եւ արձակեաց զնա եւ գնաց խաղաղու-
24 թեամբ ։ Եւ եմուտ Յովաբ առ Դաւիթ
արքայ եւ ասէ, Զի՞նչ գործեցեր զայդ,
զի եկն Աբեններ առ քեզ. եւ ընդէ՞ր
25 արձակեցեր զնա խաղաղութեամբ. Եթէ
ո՞չ գիտիցես զչարութիւն Աբեններայ
որդւոյ Ներեայ. զի խաբել զքեզ եկն,
եւ իմանալ զմուտ եւ զել քո, եւ տե-
26 ղեկանալ ամենայնի զինչ եւ գործիցես։ Եւ
ել Յովաբ ի Դաւթէ, եւ արձակեաց
հրեշտակս զկնի Աբեններայ, եւ դար-
ձուցին զնա ի Ջրհորոյ անտի Սէիրմայ.
27 եւ Դաւիթ ոչ գիտէր ։ Եւ դարձոյց զԱ-
բեններ ի Քեբրոն, եւ խոտորեցոյց զնա
Յովաբ ի կողմանց դրանն խօսել ընդ
նմա [6]դաւաճանութեամբ. եւ եհար ընդ
մնակուշտն, եւ մեռաւ. վասն արեանն
Ասայելի եղբօր [7]Յովաբայ ։
28 Եւ լուաւ Դաւիթ յետ այնորիկ եւ ա-
սէ, Անպարտ եմ ես եւ թագաւորու-
թիւն իմ ի Տեառնէ մինչեւ ցյաւիտեան՝
յարենէն Աբեններայ որդւոյ Ներեայ ։
29 Հասցեն ի գլուխ Յովաբայ եւ ի վերայ
ամենայն տանն հօր նորա. եւ մի պակա-
սեսցէ ի տանէ Յովաբայ սերմնակաթ եւ
բորոտ եւ մուրող որ շրջիցի ի ցուպ, եւ
30 սրամահ եւ սովամահ ։ Եւ Յովաբ եւ Ա-
բեսսա եղբայր նորա [8]սպանէին Աբեննե-
րայ", փոխանակ զի սպան զԱսայէլ զեղ-
բայր նոցա ի Գաբաւոն ի պատերազմին ։
31 Եւ ասէ Դաւիթ ցՅովաբ եւ ցամենայն
ժողովուրդն որ ընդ նմա, Պատառեցէք
զհանդերձս ձեր, եւ զգեցարուք քուրձ,
եւ կոծեցարուք առաջի Աբեններայ. եւ
արքայ Դաւիթ երթայր զհետ գագաղայն ։
32 Եւ թաղեցին զԱբեններ ի Քեբրոն. եւ
ամբարձ արքայ զձայն իւր եւ ելաց ի
վերայ գերեզմանի նորա, եւ լացին ամե-
նայն ժողովուրդն ի վերայ Աբեններայ ։
33 Եւ ա՛ռ ողբս արքայ ի վերայ Աբեննե-
րայ, եւ ասէ, Միթէ որպէս մեռանիցի
անզգամ, մեռաւ Աբեններ. [9]եթէ բառ
մահուամբ Նաբաղա՞յ մեռաւ Աբեններ."
34 Ձեռք քո ոչ կապեցան, եւ ոտք քո ոչ
ողխեցան ի շղթայս. [9]եւ ոչ մատեար
իբրեւ զՆաբաղ առաջի որդւոց անիրա-
ւութեան եւ անկար. այլ՝ որպէս ան-
կանիցին առաջի անիրաւաց անկար ։ Եւ
ժողովեցան ամենայն ժողովուրդն լալ
35 զնա ։ Եւ եկն ամենայն ժողովուրդն տալ
ընթրիս Դաւթի մինչդեռ աւուր կայր.
եւ երդուաւ Դաւիթ եւ ասէ, Ոն եւ ոն
արասցէ ինձ Աստուած եւ ոն եւ ոն յա-
ւելցէ, եթէ ոչ մտանիցէ արեգակն եւ
ապա ճաշակեցից հաց, եւ կամ զայլ ինչ
36 ամենայն ։ Եւ գիտաց ամենայն ժողո-
վուրդն, եւ հաճոյ թուեցաւ առաջի նո-
ցա ամենայն ինչ զոր արար արքայ ա-
37 ռաջի ժողովրդեանն զբարութիւն ։ Եւ
գիտաց ամենայն ժողովուրդն եւ ամե-
նայն Իսրայէլ յաւուր յայնմիկ եթէ ոչ
յարքայէ եղեւ սպանանել զԱբեններ որ-
38 դի Ներեայ ։ Եւ ասէ արքայ ցծառայսն
իւր, Ո՞չ գիտէք եթէ առաջնորդ մեծ

[1] Ոմն. ուխտեսցեն [2] Ոմն. ամենայնի ընդ որ [3] Ոմն. Աբեններ [4] Ոմն. քանզի [5] Ոմն. արքայ

[6] Ոմն. հանդարտութեամբ, կամ, ի ծածուկ [7] Ոմն. իւրոյ [8] Ոմն. սպանին զԱբեններ [9] Ոմն. պակասէ

39 անկաւ յաւուր յայսմիկ յԻսրայէլի. Եւ
[1]զի սա ազգական է այսօր եւ յարքայէ
կացուցեալ է՛՛. եւ արքդ այդոքիկ որ-
դիք Շարուհեայ խստագոյնք քան զիս
են. հատուսցէ Տէր չարին ըստ չարու-
թեան իւրում։

ԳԼ. Դ

1 Եւ լուաւ Յեբուսթէ որդի Սաւուղայ
եթէ մեռաւ Աբեններ ի Քեբրոն, լուծան
ձեռք իւր, եւ ամենայն արք Իսրայէլի
2 լքան։ Եւ արք երկու գլխաւորք գնդիցն
Յեբուսթեայ որդւոյ Սաւուղայ, անուն
միումն Բաանա, եւ անուն երկրորդին
Ռեքաբ, որդիք Ռեմմոնայ Բերովթացւոյ,
յորդւոցն Բենիամենի. զի եւ Բերովթ
3 որդւոյն Բենիամենի ի համարի էր։ Եւ
փախեան Բերովթացիքն ի Գեթթայի,
եւ էին անդ պանդխտացեալք մինչեւ
4 ցայսօր։ Եւ Յովնաթանու որդւոյ Սա-
ւուղայ էր որդի մի հաշմ ոտիւք, որդի
ամաց հնգից. եւ գնա ի հասանել գու-
ժին Սաւուղայ եւ Յովնաթանու որդւոյ
նորա յԵզրայելէ՝ առ դայեակ իւր եւ փա-
խեաւ. եւ եղեւ ընդ փութանալն իւրում
ի գաղթել՝ անկաւ եւ կաղացաւ. եւ ա-
5 նուն նորա Մեմփիբոսթէ։ Եւ գնացին
որդիք Ռեմմոնայ Բերովթացւոյ, Ռեքաբ
եւ Բաանա, եւ մտին ի տօթ ժամուն ա-
ւուրն ի տուն Յեբուսթեայ. եւ նա ննջէր
6 յանկողնի ի հասարակ աւուր. [2]Եւ բա-
րապան տանն սրբէր ցորեան, եւ նիր-
հեաց եւ ի քուն եմուտ. եւ Ռեքաբ եւ
7 Բաանա եղբարք զօղեցին,՛՛ Եւ մտին ի
տունն. եւ Յեբուսթէ ննջէր ի գահոյս
իւրում ի սենեկի. եւ հարին զնա եւ
սպանին, եւ հատին զգլուխ նորա եւ ա-
ռին զգլուխն, եւ գնացին զճանապարհն
8 [3]արեւմտից զամենայն գիշերն. Եւ բերին
զգլուխն Յեբուսթեայ առ Դաւիթ ի Քեբ-
րոն, եւ ասեն ցարքայ, Ահա գլուխ Յե-
բուսթեայ որդւոյ Սաւուղայ թշնամւոյ
քո, որ խնդրէր զանձն քո. եւ Տէր ետ
տեառն մերում արքայի վրէժխնդրու-
թիւն [4]ի թշնամեաց իւրոց, որպէս՛՛ յա-
ւուր յայսմիկ ի Սաւուղայ [4]ի թշնամւոյ
9 քումմէ՛՛ եւ ի զաւակէ նորա։ Եւ պա-
տասխանի ետ Դաւիթ Ռեքաբայ եւ Բաա-
նայ եղբօր նորա՝ որդւոց Ռեմմոնայ Բե-
րովթացւոյ՝ եւ ասէ ցնոսա, Կենդանի է
Տէր որ փրկեաց զանձն իմ յամենայն
10 նեղութենէ, Զի որ պատմեաց ինձ եթէ
Մեռաւ Սաւուղ, եւ նմա թուէր եթէ
աւետիս տայցէ առաջի իմ, կալայ եւ
սպանի զնա ի Սիկեղակ, որում օրէն էր
11 ինձ տալ աւետչեաց. Եւ արդ արք չարք
սպանէք զայր արդար ի տան իւրում յան-
կողնի. եւ արդ խնդրեցից զարիւն նորա ի
ձեռաց ձերոց, եւ սատակեցից զձեզ յերկ-
12 րէ։ Եւ հրաման ետ Դաւիթ մանկտւոյ
իւրում, եւ սպանին զնոսա, եւ կտրե-
ցին զձեռս եւ զոտս նոցա, եւ կախեցին
ի վերայ ջրհորին ի Քեբրոն։ Եւ զգլուխն
Յեբուսթեայ թաղեցին ի գերեզմանի Ա-
բեններայ որդւոյ Ներեայ ի Քեբրոն։

ԳԼ. Ե

1 Եւ եկին ամենայն ցեղքն Իսրայէլի առ
Դաւիթ ի Քեբրոն, խօսեցան եւ ասեն,
Ահաւասիկ ոսկերք քո եւ մարմինք քո
2 եմք։ Եւ յերէկն եւ յեռանդ մինչ էր
Սաւուղ թագաւոր ի վերայ մեր, դու
էիր որ մուծանէիր եւ հանէիր զԻսրա-
յէլ. եւ ասաց քեզ Տէր, Դու հովուես-
ցես ժողովրդեան իմոյ Իսրայէլի, եւ դու
3 լիցիս առաջնորդ ի վերայ Իսրայէլի։ Եւ
եկին ամենայն ծերքն Իսրայէլի առ ար-
քայ ի Քեբրոն, եւ ուխտեաց ընդ նոսա
ուխտ արքայ Դաւիթ ի Քեբրոն առաջի
Տեառն. եւ օծին զԴաւիթ թագաւոր ի
վերայ ամենայն Իսրայէլի։
4 Որդի ամաց երեսնից Դաւիթ ի թա-
գաւորել իւրում. եւ քառասուն ամ թա-
5 գաւորեաց։ Եւթն ամ եւ վեց ամիս թա-
գաւորեաց ի Քեբրոն ի վերայ Յուդայ,
եւ երեսուն եւ երիս ամս թագաւորեաց
ի վերայ ամենայն Իսրայէլի եւ Յուդայ
յԵրուսաղէմ։
6 Եւ չոգաւ Դաւիթ եւ արք նորա յԵ-
րուսաղէմ առ Յեբուսայեն բնակեալ
յերկրին. եւ ասացաւ Դաւթի թէ Ոչ
մտցես դու այսր, [5]քանզի ընդդէմ դար-
ձան կոյրք եւ կաղք՛՛ եւ ասեն, Մի մտցէ
7 այսր Դաւիթ։ Եւ առ Դաւիթ [6]զՍիոն
եւ զամրոց նորա՛՛, այն է քաղաք Դաւ-
8 թի։ Եւ ասէ Դաւիթ յաւուր յայնմիկ,
Ամենայն որ հարկանիցէ [4]սրով զՅեբու-

[1]Եբր. Ես տկար եմ այսօր, թէպէտեւ օծեալ թագաւոր [2]Եբր. Եւ ահա մտին մինչեւ ի մէջ տանն որպէս որ առնուցուն ցորեան. եւ հարին զնա ընդ անակուշտն, եւ Ռեքաբ եւ Բաանա եղբայր նորա փախեան։ [3]Եբր. դաշտին
[4]Յեբր. պակասէ

[5]Եբր. մինչեւ վանեսցես զկոյրս եւ զկաղս [6]Եբր. զամրոցն զՍիոն

սայլն, եւ մատիցէ [1]սրով եւ ի կաղն եւ
ի կոյրս [2]եւ յատելիս անձին Դաւթի. վասն
այնորիկ ասեն, կոյրք եւ կաղք մի՛ մտցեն
9 ի տուն [2]Տեառն։ Եւ նստաւ Դաւիթ յամ-
րոցին, եւ կոչեցաւ այն քաղաք Դաւ-
թի. եւ շինեաց [2]զնա քաղաք՝՝ Դաւիթ
շուրջանակի [3]ծագէ ի ծագ, եւ զտունն
10 իւր՝՝։ Եւ երթայր երթայր Դաւիթ եւ մե-
ծանայր, եւ Տէր ամենակալ էր ընդ նմա։
11 Եւ առաքեաց Քիրամ արքայ Տիւրո-
սի հրեշտակս առ Դաւիթ, եւ փայտ
եղեւնեայս եւ հիւսունս փայտից եւ ճար-
տարապետս քարանց, եւ շինեցին տուն
12 Դաւթի։ Եւ գիտաց Դաւիթ եթէ հաս-
տատեաց զնա Տէր թագաւոր ի վերայ
Իսրայէլի, եւ թէ բարձրացաւ թագաւո-
րութիւն նորա վասն ժողովրդեան նո-
13 րա Իսրայէլի։ Եւ առ եւս Դաւիթ կա-
նայս եւ հարճս յԵրուսաղեմէ՝ յետ գա-
լոյ նորա ի Քեբրոնէ. եւ եղեն Դաւթի
14 եւ այլ եւս ուստերք եւ դստերք։ Եւ այս
են անուանք ծնելոց որդւոց նորա յԵ-
րուսաղէմ. Սամմաթ, Յեսիբաթ, Նա-
15 թան, [4]Գաղամաան, Յեբաար, Թեմեսուս,
16 Եղփաղաա, Նագեդ, Նափեկ, Յենա-
թա, Եղիսամիա, Բաղիդաէ,՝՝ Եղիփաղէտ։
17 Եւ լուան այլազգիքն եթէ օծեալ է
Դաւիթ թագաւոր ի վերայ Իսրայէլի, եւ
ելին ամենայն այլազգիքն խնդրել զԴա-
ւիթ. եւ լուաւ Դաւիթ եւ էջ յամրոցն։
18 Եւ այլազգիքն եկին հասին եւ խառնե-
19 ցան ի հովիտս Տիտանացն։ Եւ եհարց
Դաւիթ ի Տեառնէ եւ ասէ, եթէ ելի՞ց
ի վերայ այլազգեացն, եւ մատնեսցե՞ս
զնոսա ի ձեռս իմ։ Եւ ասէ Տէր ցԴա-
ւիթ, Ել. զի մատնելով մատնեցից զայլ-
20 ազգիսն ի ձեռս քո։ Եւ եկն Դաւիթ [5]ի
վերուստ խրամատիցն՝՝, եւ կոտորեաց
անդ զայլազգիսն. եւ ասէ Դաւիթ, Տէր
խրամատեաց զթշնամիս իմ առաջի իմ,
որպէս խրամատիցին ջուրք. վասն այ-
նորիկ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ
21 [6]Ի վերայ խրամատից՝՝։ Եւ թողին անդ
զաստուածս իւրեանց, եւ առ զնոսա
Դաւիթ եւ արքն որ ընդ նմա։
22 Եւ յաւելին այլազգիքն միւսանգամ
ելանել, եւ գումարեցան ի հովիտս Տի-
23 տանացւոց։ Եւ եհարց Դաւիթ ի Տեառ-
նէ։ Եւ [7]ասէ, եթէ Ելի՞ց ի վերայ այլազ-
գեացն, եւ մատնեսցե՞ս զնոսա ի ձեռս
իմ։ Եւ ասէ Տէր, Մի՛ ելանել ընդդէմ
նոցա, դարձիր ի նոցանէն, եւ եկեսցես
24 ի թեւէ նոցա մօտ ի Լալօնան՝՝. Եւ եղի-
ցի յորժամ լսիցես զձայն շարժման [8]ան-
տառին Լալօնից՝՝, յայնժամ իջցես [2]առ
նոսա՝՝. քանզի յայնժամ ելցէ Տէր առա-
ջի քո կոտորել [9]ի պատերազմի այլազ-
25 գեացն։ Եւ արար Դաւիթ որպէս հրա-
ման ետ նմա Տէր, եւ եհար զայլազ-
գիսն ի Գաբաւոնէ մինչեւ ցԳազերա։

ԳԼ. Զ

1 Եւ ժողովեաց միւսանգամ Դաւիթ զա-
մենայն երիտասարդս յԻսրայէլէ իբրեւ
2 [10]եւթանասուն հազար։ Եւ յարեաւ գնաց
Դաւիթ եւ ամենայն ժողովուրդ նորա
ընդ նմա [11]յիշխանացն Յուդայ ի զառի-
վերն ընդ որ ել տապանակն՝՝ Աստուա-
ծոյ, յորոյ վերայ կոչեցաւ անուն Տեառն
[2]Աստուծոյ զօրութեանց, որ նստի ի քե-
3 րովբէս ի վերայ նորա։ Եւ [12]եհան եդ
զտապանակն Տեառն ի վերայ սայլի նո-
4 րոյ։ Եւ առ զնա ի տանէ Ամինադա-
բայ բլրացւոյ. եւ Ոզա եւ եղբարք նո-
րա որդիք Ամինադաբայ՝ վարէին զսայլն
հանդերձ տապանակաւն, եւ եղբարք
5 նորա երթային առաջի տապանակին։ Եւ
Դաւիթ եւ որդիքն Իսրայէլի խաղային
առաջի Տեառն աւուրօք եւ նուագարա-
նօք զօրութեամբ, եւ երգովք եւ քնա-
րօք եւ սրնգօք եւ թմբկօք եւ ծնծղա-
յիւք եւ փողովք՝՝։
6 Եւ եկին մինչեւ ցկալն [13]Ամինադա-
բայ. եւ ձգեաց Ոզա զձեռն իւր ի տա-
պանակն Աստուծոյ ունել զնա, եւ կա-
լաւ զնա. զի թիւրեաց զնա զուարակն

[1] Եբր. ի ջրմուղսն [2] Յեբր. պակասէ [3] Եբր. ի Մելոնէ եւ ի ներքս [4] Եբր. և Սողոմոն. (15) Եւ Յեբաար, եւ Եղիսուա եւ Նաբեկ եւ Յափիէ, (16) Եւ Եղիսամա, եւ Եղիադա, եւ [5] Եբր. ի տեղի խրամատեցն [6] Եբր. Տեղի խրամատից

[7] Եբր. ասէ Տէր Մի՛ ելանէք, դարձիր յետոյ նոցա, եւ եկ առ նոսա ի թիկանց թթենեացն, կամ Լալօնից (Եբր. պէքեա) [8] Եբր. ի գլուխ թթենեաց, կամ Լալօնից [9] Եբր. ի բանակի [10] Եբր. երեսուն [11] Եբր. ի Բահաղ Յուդայ հանել անտի զտապանակն [12] Եբր. Հեծուցին զտապանակն Աստուծոյ ի վերայ սայլի նորոյ, եւ բարձին զնա ի տանէ Աբինադաբայ բլրացւոյ. եւ Ազիա եւ Աքիով որդիք Աբինադաբայ վարէին զսայլն նոր։ (4) Եւ բարձին զնա ի տանէն Աբինադաբայ բլրացւոյ հանդերձ տապանակաւն Աստուծոյ. եւ Աքիով երթայր առաջի տապանակին։ (5) Եւ Դաւիթ եւ ամենայն տունն Իսրայէլի խաղային առաջի Տեառն ամենայն [illegible] ի փայտից մայրի, եւ քնարօք եւ սաղմոսարանօք եւ թմբկօք եւ աւուրօք եւ ծնծղայիւք [13] Եբր. Նաքոնայ

7 ¹ունելոյ անտի զնա"։ Եւ բարկացաւ Տէր
Ոզայ, եւ եհար զնա անդ Աստուած
վասն յանդգնութեանն, եւ մեռաւ ան-
դէն առ տապանակին ¹Տեառն առաջի"
8 Աստուծոյ։ Եւ տրտմեցաւ Դաւիթ՝ զի
խրամատեաց Տէր խրամատութիւն յՈ-
զա. եւ կոչեցաւ անուն այն Խրամա-
9 տութիւն Ոզայ մինչեւ ցայսօր։ Եւ եր-
կեաւ Դաւիթ ի Տեառնէ յաւուր յայն-
միկ եւ ասէ, Զիա՞րդ մտանիցէ առ իս
10 տապանակդ ²Աստուծոյ։ Եւ ոչ կամե-
ցաւ Դաւիթ տանել առ ինքն զտապա-
նակ ուխտին Տեառն ի քաղաքն Դաւ-
թի. եւ խոտորեցոյց զնա Դաւիթ ի տունն
11 ³Աբեդդարայ Գեթացւոյ։ Եւ նստաւ տա-
պանակն Տեառն ի տան ³Աբեդդարայ Գե-
թացւոյ ամիսս երիս. եւ օրհնեաց Տէր
⁴զԱբեդդար եւ զամենայն տուն նորա։
12 Եւ պատմեցին Դաւթի եւ ասեն, Օրհ-
նեաց Տէր զտունն ³Աբեդդարայ եւ զա-
մենայն ինչ որ նորա վասն տապանակին
Աստուծոյ. եւ չոգաւ Դաւիթ եւ եհան
զտապանակն Տեառն ի տանէ ³Աբեդդա-
րայ ի քաղաքն Դաւթի ուրախութեամբ։
13 Եւ ⁵էին ընդ նմա որ բառնային զտա-
պանակն եւթն դաս պարուց, եւ սպանդ
14 զուարակի եւ գառանց։ Եւ Դաւիթ հար-
կանէր զաւիղս նուագարանացն առա-
ջի Տեառն. եւ էր Դաւիթ զգեցեալ պատ-
15 մուճան հանդերձեալ"։ Եւ Դաւիթ եւ ա-
մենայն տունն Իսրայելի հանէին զտա-
պանակն Տեառն հնչակաւ եւ ձայնիւ
16 փողոյ։ Եւ եղեւ ի հասանել տապանակին ի
քաղաքն Դաւթի, եւ Մեղքող դուստր
Սաւուղայ հայէր ընդ պատուհանն. եւ
ետես զԴաւիթ արքայ զի կաքաւէր
եւ ⁶նուագէր զնուագարանսն" առաջի
Տեառն, անգոսնեաց զնա ի սրտի իւ-
17 րում։ Եւ բերին զտապանակն Տեառն,
եւ եդին զնա ի տեղւոջ իւրում ի մէջ
խորանին զոր եհար նմա Դաւիթ. եւ
մատոյց Դաւիթ ողջակէզս առաջի Տեառն
18 եւ խաղաղականս։ Եւ իբրեւ կատար-
եաց Դաւիթ մատուցանել զողջակէզսն
եւ զխաղաղականս, օրհնեաց զժողո-
վուրդն յանուն Տեառն զօրութեանց։
19 Եւ բաշխեաց ամենայն ժողովրդեանն,

¹Եբր. դոխանէ ²Եբր. Տեառն ³Եբր. Աբդեդոմայ ⁴զԱբդեդոմ ⁵Եբր. եղեւ իբրեւ գնացին որ բառնային զտապանակն Տեառն քայլս վեց, եւ զոհէր եզն եւ պարարակ։ (14) Եւ Դաւիթ կաքաւէր ամենայն զօրութեամբ առաջի Տեառն և Դաւիթ զգեցեալ էր եփոդ կտաւեայ ⁶Եբր. խաղայր

⁷յամենայն զօրութեան Իսրայելի ի Դանայ
մինչեւ ցԲերսաբէէ," յառնէ մինչեւ
ցկին, իւրաքանչիւր ումեք բլիթ մի հա-
ցի, եւ պատառ մի ի կասկարայից, եւ
քաքար մի ի տապակէ. եւ գնաց ամե-
նայն ժողովուրդն իւրաքանչիւր ոք ի
տուն իւր։
20 Եւ դարձաւ Դաւիթ օրհնել զտուն
իւր. եւ ել Մեղքող դուստր Սաւուղայ
ընդ առաջ Դաւթի, եւ ¹օրհնեաց զնա
եւ" ասէ, Քանի՜ փառաւորեալ էր այսօր
արքայ Իսրայելի, որ հոլանեցաւ այսօր
առաջի աղախնանց եւ ծառայից իւրոց,
զոր օրինակ հոլանիցի հոլանելով մի ոք
21 ի կաքաւչաց։ Եւ ասէ Դաւիթ ցՄեղ-
քող, Առաջի Տեառն կաքաւեցից, ¹օրհ-
նեալ է Տէր Աստուած" որ ընտրեաց զիս
քան զհայր քո եւ քան զամենայն տուն
նորա, եւ կացոյց զիս առաջնորդ ի վե-
րայ ժողովրդեան իւրոյ Իսրայելի, եւ
խաղացից ¹եւ կաքաւեցից" առաջի
22 Տեառն։ Եւ ⁸հոլանեցայց սոյնպէս" եւս
քան զեւս. եւ եղէց անպիտան յաչս
⁹քո, եւ ընդ աղախնայս ընդ որս ասա-
23 ցեր ¹փառաւորել՝ փառաւորեցայց։ Եւ
Մեղքողայ դստեր Սաւուղայ ոչ եղեւ
որդի մինչեւ ցօր մահուան իւրոյ։

Գլ. Է

1 Եւ եղեւ յորժամ նստաւ ¹⁰Դաւիթ ի
տան իւրում, եւ Տէր հանգոյց զնա յա-
մենայն թշնամեաց իւրոց շուրջանակի,
2 Եւ ասէ արքայ ցՆաթան մարգարէ, Ա-
հաւասիկ ես բնակեալ եմ ի տան եղեւ-
նափայտից, եւ տապանակն Աստուծոյ
3 ¹¹շրջիցի ի մէջ խորանի"։ Եւ ասէ Նա-
թան ցարքայ, Զամենայն որ ինչ իցէ
ի սրտի քում, երթ եւ արա. զի Տէր
ընդ քեզ է։
4 Եւ եղեւ ի գիշերին յայնմիկ եղեւ բան
5 Տեառն առ Նաթան եւ ասէ, Երթ եւ
ասա ցծառայ իմ Դաւիթ, Այսպէս ասէ
Տէր. ¹²Ոչ շինեսցես դու" ինձ տուն բնա-
6 կելոյ. Զի ոչ բնակեցայ ի տան յօրէ
յորմէ հետէ հանի զորդիսն Իսրայելի յԵ-
գիպտոսէ մինչեւ ցայսօր, եւ շրջէի
7 ¹³յիջավանի խորանաւ։ Ամենայն ուրեք
ուր շրջէի ի մէջ ամենայն Իսրայելի,

⁷Եբր. ամենայն բազմութեան Իսրայելի ⁸Եբր. եղէց անարգ ⁹Եբր. իմ ¹⁰Եբր. արքայ ¹¹Եբր. նստի ընդ վարագուրաւ ¹²Եբր. Դո՞ւ շինեսցես ¹³Եբր. վրանաւ եւ

եթէ խօսելով խօսեցա՞յ երբեք ընդ մի-
ում ցեղի Իսրայէլի ում եւ հրաման ե-
տու հովուել զժողովուրդ իմ զԻսրայէլ,
ասել՝ թէ Ընդէ՞ր ոչ շինեցէք ինձ տուն
8 եղեւնափայտեայ։ Եւ արդ այսպէս ա-
սասցես ծառայ իմ Դաւիթ, Այսպէս
ասէ Տէր ամենակալ. Առի ես զքեզ ի
վանաց հօտից լինել քեզ յառաջնորդ ի
9 վերայ ժողովրդեան իմոյ Իսրայէլի. Եւ
էի ընդ քեզ ամենայն ուրեք ուր եւ
երթայիր. եւ սատակեցի զամենայն
թշնամիս քո յերեսաց քոց, եւ արարի
զքեզ անուանի ըստ անուանց մեծամե-
10 ծաց որ ի վերայ երկրի։ Եւ եդից տեղի
ժողովրդեան իմոյ Իսրայէլի, եւ տնկե-
ցից զնա եւ բնակեսցէ [1]առանձինն. եւ
մի՛ եւս հոգասցի″ եւ ոչ եւս յաւելցէ
որդի անօրէնութեան չարչարել զնա իբրեւ
11 զառաջինն, Յաւուրցն յորոց կարգեցի
դատաւորս ի վերայ ժողովրդեան իմոյ
Իսրայէլի. եւ հանգուցից զքեզ յամենայն
թշնամեաց քոց. եւ [2]պատմեսցէ քեզ
12 Տէր զի շինեսցես նմա տուն″։ Եւ եղիցի
եթէ լցցին աւուրք քո, եւ ննջեսցես
ընդ հարս քո, յարուցից զզաւակ քո յետ
քո, որ եղիցի յորովայնէ քումմէ, եւ
[3]պատրաստեցից զարքայութիւն [4]քո նմա″։
13 Նա շինեսցէ տուն անուան իմոյ, եւ կանգ-
նեցից զաթոռ նորա մինչեւ ցյաւիտեան.
14 Ես եղէց նմա ի հայր, եւ նա եղիցի ինձ
յորդի. եւ [5]եթէ եկեսցէ անիրաւութիւն
նորա, յանդիմանեցից զնա, եւ″ խրա-
տեցից զնա գաւազանաւ արանց եւ
15 տանջանօք որդւոց մարդկան. Բայց զո-
ղորմութիւն ոչ մերժեցից ի նմանէ, որ-
պէս մերժեցի [6]յորոց մերժեցին առաջի
16 երեսաց իմոց″։ Հաւատարիմ լիցի [7]ա-
նուն նորա եւ արքայութիւն նորա ա-
ռաջի իմ″ մինչեւ ցյաւիտեան, եւ ա-
թոռ [8]նորա կացցէ կանգուն [9]առաջի իմ″
17 մինչեւ ցյաւիտեան։ Ըստ ամենայն բա-
նիցս այսոցիկ եւ ըստ ամենայն տեսլ-
եանս այսորիկ՝ սոյնպէս խօսեցաւ Նա-
թան ընդ Դաւթայ։
18 Եւ եմուտ արքայ Դաւիթ եւ նստաւ
առաջի Տեառն, եւ ասէ, Ո՞վ եմ ես,
Տէր իմ Տէր, եւ ո՞ տուն իմ, զի [10]սի-
19 րեցեր զիս մինչեւ ցայդ վայր. Եւ [11]ոչ
փաքրկացայ սակաւիկ ինչ″ առաջի քո,
Տէր իմ Տէր, եւ խօսեցար վասն տան
ծառայի քո յերկար. եւ ա՞յս է օրէն
20 մարդոյ, Տէր իմ Տէր։ Եւ զի՞ եւս յաւե-
լուցու Դաւիթ խօսել առ քեզ. եւ դու
ինքնին գիտես զծառայ քո, Տէր իմ Տէր։
21 [12]Վասն ծառայի քո արարեր, եւ ըստ
ամենայն″ սրտի քո արարեր զամենայն
զմեծութիւնս զայս ծանուցեալ ծառայի
22 քում [13]Վասն մեծացուցանելոյ զիս″,
Տէր իմ Տէր. զի չիք ոք իբրեւ զքեզ,
եւ չիք Աստուած բաց ի քէն ի վերայ
ամենայնի զոր լուաք ականջօք մերովք։
23 Եւ ո՞վ է ազգ ի վերայ երկրի իբրեւ
զժողովուրդ քո զԻսրայէլ, որում առաջ-
նորդեաց Աստուած փրկել իւր ժողո-
վուրդ, դնել [14]քեզ անուն եւ առնել
[14]քեզ մեծութիւն եւ [15]յայտնութիւն,
մերժել քեզ″ յերեսաց ժողովրդեանս քո
զոր փրկեցեր դու քեզ յԵգիպտոսէ՝
24 [16]զազգս եւ զբնակութիւնս″։ Եւ պատ-
րաստեցեր դու քեզ զժողովուրդ քո
զԻսրայէլ ի ժողովուրդ մինչեւ ցյաւիտ-
եան, եւ դու, Տէր, եղեր նոցա յԱս-
25 տուած։ Եւ արդ, Տէր իմ, զբանն զոր
խօսեցար վասն ծառայի քո եւ տան
նորա՝ հաւատարմացո մինչեւ յաւիտեան,
26 եւ արա որպէս եւ խօսեցար. Եւ մե-
ծասցի անուն քո մինչեւ ցյաւիտեան.
եւ [17]արդ, Տէր ամենակալ, Աստուած
ի վերայ ամենայն Իսրայէլի. տուն ծա-
ռայի քո Դաւթի եղիցի կանգուն առաջի
27 քո. Զի դու [9]ես Տէր ամենակալ Աս-
տուած Իսրայէլի, [9]Եւ արդ որպէս խօ-
սեցար մեծասցի անուն քո մինչեւ ցյա-
ւիտեան, ասէ Տէր ամենակալ Աստուած
Իսրայէլի:″ յայտնեցեր յունկն ծառայի
քո եւ ասացեր, շինեցից քեզ տուն.
վասն այնորիկ եգիտ ծառայ քո զսիրտ
իւր՝ կալ առ քեզ յաղօթս զաղօթս զայ-
28 սոսիկ։ Եւ արդ, Տէր իմ Տէր, դու ես
Աստուած, եւ բանք քո եղիցին ճշմա-
րիտ, եւ զոր խօսեցար վասն ծառայի
29 քո զամենայն բարութիւնս զայս։ Եւ
արդ սկսիր օրհնել զտուն ծառայի քո՝

[1]Եբր. ի տեղւոջ իւրում, եւ մի՛ եւս խախտեսցի [2]Եբր. պատմէ քեզ Տէր, զի շինեսցէ քեզ Տէր տուն [3]Եբր. Հաստատեցից [4]Եբր. նորա [5]Եբր. ի խոտորել նորա [6]Եբր. ի Սաւուղայ զոր մերժեցի յերեսաց քոց [7]Եբր. տուն քո եւ արքայութիւն քո առաջի քո [8]Եբր. քո [9]Եբր. [illegible]

[10]Եբր. ածեր [11]Եբր. փոքր եղեւ այս տակաւին [12]Եբր. Վասն բանի քո եւ ըստ [13]Եբր. Վասն որոյ մեծացար [14]Եբր. իւր [15]Եբր. ահաւորս երկրի քում [16]Եբր. յազգաց եւ ի գից նոցա [17]Եբր. ասիցի

լինել առաջի քո յաւիտեան. զի դու,
Տէր իմ Տէր, խօսեցար, եւ յօրհնու-
թենէ քումմէ օրհնեսցի տուն ծառայի
քո յաւիտեան։

## ԳԼ. Ը

1 Եւ եղեւ յետ այսորիկ եհար Դաւիթ
զայլազգիսն եւ վանեաց զնոսա, եւ ա՛ռ
Դաւիթ [1]զզատուցեալսն ի ձեռաց այլազգ-
2 եացն։ Եւ եհար Դաւիթ զՄովաբ, եւ
չափեաց զնոսա պարանօք, եւ զա-
ռացոյց զնոսա յերկիր. եւ եղեն երկու
պարանքն սպանանելոյ եւ [2]երկու պա-
րանքն" ապրեցուցանելոյ. եւ եղեւ Մո-
վաբ Դաւթի ի ծառայս պատարագաբերս։
3 Եւ եհար Դաւիթ զԱդրաազար զորդի
Ռովաբայ՝ զարքայ Սուբայ, յերթալ
նորա արկանել զձեռն իւր ի վերայ գե-
4 տոյն Եփրատայ։ Եւ առ զնորա Դաւիթ
հազար [3]կառս, եւ եւթն հազար" հե-
ծելոց, եւ քսան հազար հետեւակաց.
եւ քակեաց Դաւիթ զամենայն կառսն,
եւ եթող իւր ի նոցանէ հարեւր կառս։
5 Եւ գայր Ասորին ի Դամասկոսէ օգնել
Ադրաազարու արքային Սուբայ. եւ եհար
Դաւիթ յԱսորւոցն քսան եւ երկու հա-
6 զարս արանց։ Եւ եդ Դաւիթ պա-
հակս յԱսորիս հանդէպ Դամասկոսի. եւ
եղեն Ասորիք Դաւթի ի ծառայս պա-
տարագաբերս. եւ փրկեաց Տէր զԴաւիթ
7 ամենայն ուրեք ուր եւ երթայր։ Եւ
ա՛ռ Դաւիթ [4]զապարանջանսն ոսկիս որ
էին ի ծառայսն Ադրաազարու [5]արքայի
8 Սուբայ" եւ եբեր յԵրուսաղէմ։ [6]Եւ առ
զայն Սուսակիմ արքայ Եգիպտացւոց
յելանել իւրում յԵրուսաղէմ յաւուրս
Ռոբովամայ որդւոյ Սողոմոնի։ Եւ ի
Մասբակայ առ արքայ Դաւիթ՝ յընտիր
ընտիր քաղաքաց Ադրաազարայ՝ պղինձ,
որով արար Սողոմոն զծովն պղնձի եւ
զսիւնսն եւ զաւազանսն եւ զամենայն
կահն"։

9 Եւ լուաւ Թովու արքայ Եմաթայ,
եթէ եհար Դաւիթ զամենայն զօրն Ադ-
10 րաազարայ, Եւ առաքեաց Թովու [7]զԵդ-
դուրա զորդի իւր առ արքայ Դաւիթ՝
հարցանել զխաղաղութենէ նորա. եւ
[8]օրհնեաց զնա՝ փոխանակ զի սատակեաց
զԱդրաազար". (զի այր գոռ պատերազմա-
էր նա ընդ Թովայ) եւ հակառակ կայր
նմա Ադրաազար." եւ ի ձեռս նորա էին
անօթք ոսկեղէնք եւ արծաթեղէնք եւ
11 անօթք պղնձիք։ Եւ սրբեաց զայն ար-
քայ Դաւիթ Տեառն ընդ արծաթոյն եւ
ընդ ոսկւոյն, զոր սրբեաց յամենայն
12 պատերազմաց որոց յաղթեաց, [9]յԵդովմայ
եւ ի Մովաբայ եւ յորդւոցն Ամոնայ եւ
յայլազգեացն եւ յԱմաղեկայ, եւ յաւարէ
Ադրաազարայ որդւոյ Ռովբայ արքայի
13 Սուբայ։ Եւ արար Դաւիթ [10]անուն. եւ
ի դառնալ իւրում եհար Դաւիթ զԱսո-
րիս ի Գայեղեմ" յութուտասն հազար։
14 Եւ եդ յԵդոմ պահապանս՝ յամենայն
Եդովմայեցիս[11], եւ եղեն ամենայն Ե-
դովմայեցիք ծառայք արքայի. եւ
փրկեաց Տէր զԴաւիթ ամենայն ուրեք
ուր եւ երթայր։

15 Եւ [12]թագաւորեցոյց զԴաւիթ" ի վե-
րայ ամենայն Իսրայէլի. եւ առնէր Դաւիթ
իրաւունս եւ արդարութիւն ի վերայ
16 ամենայն ժողովրդեան իւրոյ։ Եւ Յո-
վաբ որդի Շարուհեայ էր ի վերայ զօ-
րուն, եւ Յովսափատ որդի Աքիայ ի
17 վերայ յիշատակաց. Եւ Սադովկ որդի
Աքիտովբայ եւ Աքիմելէք որդի Աբիա-
թարայ՝ քահանայք. եւ [13]Սաա՝ դպրա-
18 պետ. Եւ Բանեա որդի Յովիդայեայ[14] խոր-
հրդակից, եւ Քերեթին եւ Ոփելեթին"
եւ որդիք Դաւթի խոսապետք էին։

## ԳԼ. Թ

1 Եւ ասէ Դաւիթ, Եթէ իցէ՞ ոք մնաց-
եալ ի տանէն Սաւուղայ, եւ արարից
ընդ նմա ողորմութիւն վասն Յովնա-
2 թանու։ Եւ ի տանէն Սաւուղայ էր ծա-
նուկ մի, եւ անուն նորա Սիբա, եւ
կոչեցին զնա առ Դաւիթ. եւ ասէ ցնա
արքայ, Եթէ դո՞ւ իցես Սիբայն. եւ
3 ասէ, Ես եմ ծառայ քո։ Եւ ասէ ար-
քայ, Եթէ իցէ՞ ոք մնացեալ ի տանէ
Սաւուղայ, եւ արարից ընդ նմա ողոր-
մութիւն Աստուծոյ. եւ ասէ Սիբա
ցարքայ, Է որդի մի Յովնաթանու հաշմ

[1] Ոմն. զՄեթեկամմա [2] Ոմն. ողջոյն պարան
[3] Ոմն. եւ եւթն հարեւր [4] Ոմն. զապարանս [5] Ոմն. [illegible]
[6] Ոմն. Եւ ի Բեթաւհէ եւ ի Բերոթայէ, ի քաղաքաց Ադրաազարայ, ա՛ռ արքայ Դաւիթ պղինձ բազում յոյժ [7] Ոմն. զՅովրամ

[8] Ոմն. օրհնել զնա զի պատերազմեցաւ ընդ Ադրաազարու եւ սատակեաց զնա [9] Ոմն. յԱսորւոց
[10] Ոմն. անուն ի դառնալ իւրում ի հարկանելոյ զԱսորիս ի ձորն Աղտից [11] Ոմն. [illegible] պահակապանս [12] Ոմն. թագաւորեաց Դաւիթ
[13] Ոմն. Սարայա [14] Ոմն. ի վերայ Քերեթայն եւ Ոփելեթայն (Տե՛ս Գլ. Ի. 23։)

4 ոտիւք ։ Եւ ասէ արքայ, Ո՞ւր է նա ։
Եւ ասէ Սիբա ցարքայ, Ահա է ի տան
Մաքիրայ որդւոյ Ամիելի Լադաբարացւոյ։
5 Եւ առաքեաց արքայ Դաւիթ եւ առ
զնա ի տանէ Մաքիրայ որդւոյ Ամիելի
6 Լադաբարացւոյ ։ Եւ եկն Մեմփիբոսթէ
որդի Յովնաթանու որդւոյ Սաւուղայ
առ արքայ Դաւիթ, եւ անկաւ ի վերայ
երեսաց իւրոց եւ երկիր եպագ նմա ։
Եւ ասէ ցնա Դաւիթ, Մեմփիբոսթէ.
7 եւ ասէ, Ահաւասիկ եմ ծառայ քո ։ Եւ
ասէ ցնա Դաւիթ, Մի՛ երկնչիր, զի
առնելով առնեմ ընդ քեզ ողորմու-
թիւն վասն Յովնաթանու հօր քո. եւ
դարձուցից քեզ զամենայն անդս Սաւու-
ղայ՝ [1]զհօր հօր քո. եւ դու ուտիցես հաց
8 հանապազ ի սեղան իմում ։ Եւ երկիր
եպագ Մեմփիբոսթէ եւ ասէ, Ո՞վ է ծառայ
քո, զի հայեցար ի շուն մի մեռեալ
9 նմանող ինձ ։ Եւ կոչեաց արքայ զՍիբա
զծառայ Սաւուղայ եւ ասէ ցնա, Զա-
մենայն ինչ որ է Սաւուղայ, եւ զա-
մենայն որ տան նորա, ետու որդւոյ
10 տեառն քո ։ Եւ գործեսցես դմա զեր-
կիրն, դու եւ որդիք քո եւ ծառայք քո,
եւ մուծցես ի տուն տեառն քո հաց եւ
կերիցեն զայն. եւ Մեմփիբոսթէ որդի
տեառն քո կերիցէ հաց հանապազ ի
սեղան իմում ։ Եւ Սիբայի էին որդիք
11 հնգետասան եւ ծառայք քսան ։ Եւ ասէ
Սիբա ցարքայ, Ըստ ամենայնի զոր
հրաման ետ տէր իմ արքայ ծառայի
իւրում, այնպէս արասցէ ծառայ քո ։ Եւ
Մեմփիբոսթէ ուտէր հաց ի սեղանոյ
Դաւթի իբրեւ զմի յորդւոցն արքայի ։
12 Եւ Մեմփիբոսթեայ էր որդի մի փոքրիկ,
եւ անուն նորա Միքա. եւ ամենայն
բնակութիւն տանն Սիբայի՝ ծառայք
13 Մեմփիբոսթեայ ։ Եւ Մեմփիբոսթէ բնա-
կէր յԵրուսաղէմ, զի հանապազ ի սե-
ղանոյ արքայի ուտէր. եւ ինքն էր կաղ
յերկոցունց ոտից իւրոց ։

## ԳԼ. Ժ

1 Եւ եղեւ յետ այնորիկ եւ մեռաւ ար-
քայ որդւոցն Ամոնայ. եւ թագաւորեաց
2 Անոն որդի նորա ընդ նորա ։ Եւ ասէ
Դաւիթ, Արարից ողորմութիւն ընդ
Անոնայ որդւոյ Նաասայ, զոր օրինակ
արար հայր նորա ընդ իս ողորմութիւն.
եւ առաքեաց Դաւիթ մխիթարել զնա

[1]Եբր. պոյտուե

ի ձեռն ծառայից իւրոց վասն հօր իւրոյ.
եւ չոգան ծառայքն Դաւթի յերկիր որդ-
3 ւոց Ամոնայ ։ Եւ ասեն իշխանք որդ-
ւոցն Ամոնայ ցԱնոն տէրն իւրեանց,
Միթէ փառաւորե՞լ ինչ զհայր քո առա-
ջի քո առաքեաց առ քեզ Դաւիթ մխի-
թարիչս. ոչ, այլ զի որոնեսցեն զքա-
ղաքս եւ զխանեսցեն զնա, եւ [2]լրտեսել
զնա առաքեաց Դաւիթ զծառայս իւր
4 առ քեզ ։ Եւ կալաւ[3] զծառայսն Դաւթի,
եւ եգերծ [4]զմօրուս նոցա, եւ կտրեաց
զկրասս նոցա ի միջոյ մինչեւ ցետս, եւ
5 արձակեաց զնոսա ։ Եւ պատմեցին Դաւթի
վասն արանցն. եւ առաքեաց Դաւիթ
ընդ առաջ նոցա զի էին արքն անարգ-
եալք յոյժ. եւ ասէ արքայ, Նստջիք
յԵրիքով մինչեւ աճեսցեն մօրուք ձեր,
եւ ապա դարձջիք ։
6 Եւ տեսին որդիքն Ամոնայ եթէ [5]ամօթ
արարին ժողովրդեանն՝ Դաւթի, առա-
քեցին որդիքն Ամոնայ եւ ի վարձու
կալան զԱսորիս [6]Ռովբայ եւ զԱսորիս
Սուբայ քսան հազար հետեւակաց, եւ
զարքայն [7]Ամաղեկայ հազար արամբք,
եւ ի Ստովբայ երկոտասան հազար արանց։
7 Լուաւ արքայ Դաւիթ, եւ առաքեաց
զՅովաբ եւ զամենայն զօրն զօրաւոր ։
8 Եւ ելին որդիքն Ամոնայ եւ ճակատե-
ցան ի պատերազմ առ դրան [8]քաղաքին
Ասորւոց Սուբայ, եւ Ռովբ եւ Ստովբ
9 եւ Ամաղէկ՝ էին միայն յանդին ։ Եւ ե-
տես Յովաբ՝ եթէ [9]եկին հասին ի վերայ
նորա՝ առաջոյ եւ զկնի, ընտրեաց յա-
մենայն [10]երիտասարդաց Իսրայելի, եւ
10 ճակատեցաւ ընդդէմ Ասորւոց. Եւ զմնա-
ցորդս զօրուն ետ ի ձեռս Աբեսսայ եղբօր
իւրոյ, եւ ճակատեցան ընդդէմ որդւոցն
11 Ամոնայ ։ Եւ ասէ, Եթէ յաղթահարես-
ցեն զիս Ասորիքն, եկիջիք ինձ ի փրկու-
թիւն. եւ եթէ որդիքն Ամոնայ յաղ-
թահարեսցեն զքեզ, եկիցուք ապրե-
12 ցուցանել զքեզ. Քաջ լեր եւ ժրասցուք
ի վերայ ժողովրդեան մերոյ եւ ի վերայ
քաղաքաց Աստուծոյ մերոյ. եւ Տէր
արասցէ զհաճոյս առաջի աչաց իւրոց ։
13 Եւ մատեաւ Յովաբ եւ զօրն որ ընդ
նմա ի պատերազմ ընդ Ասորիս, եւ

[2]Եբր. կործանել [3]Եբր. [illegible], Անոն [4]Եբր. զկէս մօրուաց [5]Եբր. գարշելի եղեն [6]Եբր. Բեթռովբայ [7]Եբր. Մաաքայ [8]Եբր. քաղաքին. և Ասորիքն Սուբայ և Ռովբայ և Ստովբ և Մաաքա [9]Եբր. էին նմա ճակատք կռուոյ
[10]Եբր. ընտրելոց

14 փախեան Ասորիքն յերեսաց նորա։ Եւ
որդիքն Ամոնայ իբրեւ տեսին եթէ փախ-
եան Ասորիքն, փախեան եւ նոքա յե-
րեսաց Աբեսսայ, եւ մտին ի քաղաքն.
եւ դարձաւ Յովաբ յորդւոցն Ամոնայ
եւ եկն յԵրուսաղէմ։
15 Իբրեւ տես Ասորին եթէ պարտեցաւ
առաջի Իսրայելի, գումարեցան ի միասին։
16 Եւ առաքեաց Ադրաազար եւ ժողովեաց
զԱսորին յայնմ կողմանէ Գետոյն [1]ի Քա-
ղամակ. եւ եկին հասին [2]Եղամ եւ Սով-
բակ իշխանք զօրացն Ադրաազարայ յա-
17 ռաջ քան զնա"։ Եւ ազդ եղեւ Դաւթի,
եւ ժողովեաց զամենայն Իսրայէլ եւ
անց ընդ Յորդանան, եւ եհաս [3]ի Քա-
ղամակ. եւ ճակատեցան Ասորիքն ընդ-
դէմ Դաւթի տալ ընդ նմա պատերազմ։
18 Եւ փախեան Ասորիքն յերեսաց Իսրա-
յելի. եւ կոտորեաց Դաւիթ յԱսորւոցն
եւթն հարեւր կառս, եւ քառասուն հա-
զար հեծելոց, եւ զՍովբակ իշխան զօրուն
19 նորա եհար, եւ մեռաւ անդէն։ Իբրեւ
տեսին ամենայն թագաւորք ծառայք
Ադրաազարու թէ պարտեցան առաջի
Իսրայելի, անձնատուրք եղեն [1]եւ ուխ-
տեցին ուխտ ընդ" Իսրայելի, եւ ծառա-
յեցին նոցա. եւ երկեան Ասորիքն այնու-
հետեւ ապրեցուցանել զորդիսն Ամոնայ։

## Գլ. ԺԱ

1 Եւ եղեւ ի դառնալ տարւոյն ի նոյն ժա-
մանակ ելից թագաւորացն, եւ առաք-
եաց Դաւիթ զՅովաբ եւ զծառայս իւր
ընդ նմա եւ զամենայն Իսրայէլ, եւ
սատակեցին զորդիսն Ամոնայ, եւ նստան
զՌաբաթաւ. եւ Դաւիթ նստէր յԵրու-
2 սաղէմ։ Եւ եղեւ ընդ երեկս եւ յարեաւ
Դաւիթ յանկողնէ իւրմէ, եւ զնայր ի
վերայ տանեաց տան թագաւորին. եւ
ետես ի տանեացն կին մի լուացեալ, եւ
3 կինն գեղեցիկ տեսլեամբ յոյժ։ Եւ ա-
ռաքեաց Դաւիթ եւ խնդրեաց զկինն,
եւ ասէ, Ո՞չ դա է Բերսաբէէ, դուստր
4 Եղիաբայ, կին Ուրիայ Քետացւոյ։ Եւ
առաքեաց Դաւիթ հրեշտակս եւ առ
զնա, եւ եմուտ առ նա եւ ննջեաց ընդ
նմա. եւ նա էր սրբեալ ի դաշտանէ իւրմէ.
5 եւ դարձաւ ի տուն իւր։ Եւ յղացաւ
կինն, եւ առաքեաց պատմեաց Դաւթի
6 եւ ասէ, Յղի եմ ես։ Եւ առաքեաց
Դաւիթ առ Յովաբ եւ ասէ, Առաքեա
առ իս զՈւրիա Քետացի. եւ առաքեաց
7 Յովաբ զՈւրիա առ Դաւիթ։ Եւ եկեալ
Ուրիա եմուտ առ Դաւիթ, եւ եհարց
Դաւիթ զողջունէ Յովաբայ եւ զողջունէ
8 զօրուն եւ զողջունէ պատերազմին։ [1]Եւ
ասէ Ուրիա, Ողջոյն է" Եւ ասէ Դաւիթ
ցՈւրիա, Արի էջ ի տուն քո եւ լուա զոտս
քո. եւ ել Ուրիա ի տանէ արքայի, եւ
ել զկնի նորա պարգեւ ի ձեռանէ արքայի։
9 Եւ ննջեաց Ուրիա առ դրան տանն արքայի
ընդ ծառայս նորա, եւ ոչ էջ ի տուն
10 իւր։ Եւ պատմեցին Դաւթի եւ ասեն,
եթէ ոչ էջ Ուրիա ի տուն իւր։ Եւ ասէ
Դաւիթ ցՈւրիա, Ո՞չ ի ճանապարհէ
եկեալ ես դու, ընդէ՞ր ոչ իջեր ի տուն
11 քո։ Եւ ասէ Ուրիա ցԴաւիթ, Տապա-
նակն [1]Աստուծոյ եւ Իսրայէլ եւ Յուդա
բնակեալ են ի վրանս, եւ տէր իմ Յո-
վաբ եւ ծառայք տեառն իմոյ բնակեալ
են ի բացի, եւ ես մտանիցեմ ի տո՞ւն
իմ ուտել եւ ըմպել եւ ննջել ընդ կնոջ
իմում. [4]եւ զիա՞րդ լինիցի այն." կեն-
դանի է անձն քո թէ արարից զբանդ
12 զայդ։ Եւ ասէ Դաւիթ ցՈւրիա, Նիստ
այսօր աստ, եւ վաղիւ արձակեցից զքեզ։
Եւ նստաւ Ուրիա յԵրուսաղէմ յաւուր
13 յայնմիկ, եւ ի վաղիւ անդր։ Կոչեաց զնա
Դաւիթ, եկեր նա առաջի նորա եւ արբ
եւ [5]արբեցաւ, եւ ել անագանի, ննջեաց
յանկողնի իւրում ընդ ծառայս տեառն
14 իւրոյ, եւ ի տուն իւր ոչ էջ։ Եւ եղեւ
ընդ առաւօտն եւ գրեաց Դաւիթ հրո-
վարտակ առ Յովաբ, եւ առաքեաց
15 Դաւիթ ի ձեռն Ուրիայ։ Եւ գրեաց ի
հրովարտակին եւ ասէ, Մատո զՈւրիա
ընդդէմ սաստկացեալ պատերազմին, եւ
դարձջիք ընդ կրունկ ի նմանէ, եւ հարցի
16 եւ մեռցի։ Եւ եղեւ ի պահել Յովաբայ
զքաղաքն, եւ եդ զՈւրիա ի տեղւոջն ուր
գիտէր թէ արք զօրութեան էին անդ։
17 Եւ ելին արք քաղաքին ի պատերազմ
ընդ Յովաբայ, եւ անկան ի զօրուէ ծա-
ռայիցն Դաւթի [1]եւ մեռան", եւ Ուրիա
18 Քետացի մեռաւ։ Եւ առաքեաց Յովաբ
եւ պատմեաց արքայի զամենայն զբանս
19 պատերազմին։ Եւ պատուէր ետ հրեշ-
տակին եւ ասէ, Ի վախճանել քում զա-
մենայն զբանս պատերազմիս խօսել ընդ
20 արքայի, Եւ եղիցի եթէ ելցէ ցասումն

[1] Յեբր. գոլաամ [2] Եբր. յԵղամ. եւ Սովբակ զօրավար Ադրաազարայ առաջի նոցա [3] Եբր. յԵղամ

[4] Եբր. կենդանի ես դու եւ [5] Եբր. արբեցոյց զնա Դաւիթ

արքայի եւ ասասցէ ցքեզ , եթէ Ընդէ՞ր
մերձենայիք ի քաղաքն մարտնչել , եւ
ո՞չ գիտէիք եթէ ի վերուստ ի պարսպացն
21 նետաձիգ լինին . Ո՞ եհար զԱբիմելէք
զորդի Յերոբաաղայ [1]որդւոյ Ներեայ". ո՞չ
ապաքէն կին մի բեկոր երկանի ընկէց
ի վերայ նորա ի վերուստ ի պարսպէն ,
եւ մեռաւ [2]ի Թամասի . ընդէ՞ր մօտեցայք
ի պարիսպն . եւ ասասցես թէ՝ Եւ ծա-
22 ռայ քո Ուրիա Քետացի մեռաւ ։ Եւ
չոգաւ հրեշտակն [3]Յովաբայ առ արքայ
յԵրուսաղէմ , եւ եհաս եւ պատմեաց
Դաւթի զամենայն ինչ զոր պատուիր-
եաց նմա Յովաբ , զամենայն իրս պա-
տերազմին ։ Եւ բարկացաւ Դաւիթ ի
վերայ Յովաբայ , եւ ասէ ցհրեշտակն ,
Ընդէ՞ր մերձեցայք ի քաղաքն մարտնչել.
ո՞չ գիտէիք եթէ հարկանելոց էք ի պա-
րըսպէն . ո՞ եհար զԱբիմելէք որդի Յե-
րոբաաղայ . ո՞չ ապաքէն կին մի բեկոր
երկանի ընկէց ի վերայ նորա ի պարս-
պէն , եւ մեռաւ ի Թամասի . ընդէ՞ր
23 մերձենայիք ի պարիսպն"։ Եւ ասէ հրեշ-
տակն ցԴաւիթ , Զի սաստկացան ի վերայ
մեր արք , եւ ելին առ մեզ արտաքս ,
եւ հասաք ի վերայ նոցա մինչեւ ցդուռն
24 քաղաքին . Եւ նետաձիգ եղեն աղեղ-
նաւորքն ի ծառայս քո ի վերուստ ի
պարսպէ անտի , եւ մեռան ի ծառայից
արքայի , եւ ծառայ քո Ուրիա Քետացի
25 մեռաւ ։ Եւ ասէ Դաւիթ ցհրեշտակն ,
Այսպէս ասասցես ցՅովաբ , Մի՛ թու-
եսցի չար բանդ յաչս քո . զի երբեմն
այսպէս ուտէ սուր , եւ երբեմն այնպէս.
սաստկացո զպատերազմն ընդ քաղաքիդ
եւ կործանեսցես զդա . եւ [4]զօրացո զանձն
26 քո"։ Եւ իբրեւ լուաւ կինն Ուրիայ եթէ
մեռաւ Ուրիա այր իւր , կոծեցաւ ի
27 վերայ առն իւրոյ ։ Իբրեւ անց սուգն ,
առաքեաց Դաւիթ եւ ամփոփեաց զնա ի
տուն իւր , եւ եղեւ նմա կին եւ ծնաւ
նմա որդի ։ Եւ չար թուեցաւ բանն զոր
արար Դաւիթ յաչս Տեառն ։

## ԳԼ . ԺԲ

1 Եւ առաքեաց Տէր զՆաթան [1]մարգարէ
առ Դաւիթ . եւ եմուտ առ նա եւ ասէ
ցնա , Այք երկու էին ի քաղաքի միում ,
2 մին մեծատուն եւ միւսն աղքատ ։ Եւ
մեծատանն էին հօտք եւ անդեայք բա-
3 զում յոյժ , Եւ աղքատին եւ ոչ ինչ ,
բայց որոջ մի փոքր զոր ստացեալ եւ
սպրեցուցեալ եւ սնուցեալ էր զնա , եւ
հասատաեալ էր ընդ նմա եւ ընդ որդիս
նորա ի միասին . ի հացէ նորա ուտէր եւ
ի բաժակէ նորա ըմպէր եւ ի ծոց նորա
ննջէր , եւ էր նորա իբրեւ զդուստր ։
4 Եւ եկն անցաւոր առ այրն մեծատուն .
եւ խնայեաց առնուլ ի հօտից իւրոց եւ
յանդէոց իւրոց առնել հիւրոյն անցաւորի
եկելոյ առ նա , եւ էառ զորոջ աղքա-
տին եւ արար առնն եկելոյ առ նա կե-
5 րակուր։ Եւ բարկացաւ սրտմտութեամբ
Դաւիթ յոյժ առնն , եւ ասէ Դաւիթ
ցՆաթան , Կենդանի է Տէր զի որդի մահու
6 է այրն որ արար զայն ։ Եւ զորոջն
տուժեսցի [5]եւթնպատիկ , փոխանակ առ-
նելոյ զբանն զայն , վասն զի ոչ խնայ-
7 եաց ։ Եւ ասէ Նաթան ցԴաւիթ , Դու
ես այրն [1]որ արարեր զայն". այսպէս
ասէ Տէր Աստուած Իսրայելի , Ես եմ որ
օծի զքեզ թագաւոր ի վերայ [1]ամենայն
Իսրայելի , եւ ես փրկեցի զքեզ ի ձեռաց
8 Սաւուղայ . Եւ ետու քեզ զտուն տեառն
քո , եւ զկանայս տեառն քո ի ծոց քո .
եւ ետու քեզ զԻսրայէլ եւ զՅուդա .
եւ թէ սակաւ իցէ , յաւելից քեզ զոյն-
9 չափ։ Եւ ընդէ՞ր անարգեցեր զբանն Տեառն
առնել չար առաջի աչաց նորա . զՈւ-
րիա Քետացի հարեր զու սրով , եւ զկին
նորա առեր զու քեզ կնութեան , եւ
զնա սպաներ սրով որդւոցն Ամոնայ ։
10 Եւ արդ մի՛ հեռասցի սուր ի տանէ քումմէ
մինչեւ յյաւիտեան , փոխանակ զի ա-
նարգեցեր զիս , եւ առեր զկինն Ուրիայ
11 Քետացւոյ լինել քեզ կնութեան ։ Այս-
պէս ասէ Տէր , Ահա ես յարուցից ի վերայ
քո չարիս ի տանէ քումմէ . եւ առից
զկանայս քո առաջի աչաց քոց եւ տաց
ընկերի քում , եւ ննջեսցէ ընդ կանայս քո
12 յանդիման արեգականս այսորիկ։ Զի դու
արարեր զայդ ի ծածուկ , եւ ես արարից
զբանդ զայդ յանդիման ամենայն Իսրայելի
13 եւ առաջի արեգականս այսորիկ։ Եւ ասէ
Դաւիթ ցՆաթան , Մեղայ Տեառն . եւ
ասէ Նաթան ցԴաւիթ , Եւ Տէր անցոյց
14 զքեւ զմեղս քո եւ մի՛ մեռցիս։ Բայց քանզի
զայրացուցանելով զայրացուցեր զԹշնա-
միս Տեառն բանիւդ այդուիկ , որդին քո
որ ծնանելոց է քեզ՝ մահու մեռցի ։

---

[1] Ցեբր. գոյլոսի [2] Եբր. ի Թեբէս [3] Եբր. եւ եհաս եւ պատմեաց Դաւթի զամենայն յոյր սակս ա-ռաքեալ էր զնա Յովաբ [4] Եբր. դու զօրացո զնա

[5] Եբր. չորեքպատիկ

15 Եւ գնաց Նաթան ի տուն իւր. եւ ե-
հար Տէր զմանուկն զոր ծնաւ կինն
16 Ուրիայ Դաւթի, եւ հիւանդացաւ։ Եւ
խնդրեաց Դաւիթ յԱստուծոյ վասն ման-
կանն, եւ պահեաց Դաւիթ պահս, եւ եմուտ[1]
17 անկաւ ի վերայ գետնոյ։ Եւ յարեան ի
վերայ նորա [2]ծառայք տանն յարուցա-
նել զնա, եւ ոչ կամէր յառնել ի գետ-
18 նոյն, եւ ոչ ուտէր ընդ նոսա հաց։ Եւ
եղեւ յաւուրն եւթներորդի մեռանել
մանկանն. եւ երկեան ծառայքն Դաւ-
թի պատմել նմա եթէ Մեռաւ մանուկն.
զի ասացին, Եթէ մինչդեռ կենդանի էր
մանուկն խօսեցաք ընդ նմա եւ ոչ լուաւ
ձայնի մերում, եւ զիա՞րդ ասասցուք
նմա թէ Մեռաւ մանուկն, եւ գործիցէ
19 չարիս։ Եւ ետես Դաւիթ եթէ չշնջեն
ծառայք նորա, եւ իմացաւ Դաւիթ եթէ
մեռաւ մանուկն. եւ ասէ Դաւիթ ցծա-
ռայսն իւր, եթէ Մեռեա՞լ իցէ մանուկն.
20 եւ ասեն, Մեռաւ։ Եւ յարեաւ Դաւիթ
ի գետնոյն, եւ լուացաւ եւ օծաւ, եւ
փոխեաց զհանդերձ իւր, եւ եմուտ ի
տունն [3]Աստուծոյ եւ երկիր եպագ նմա.
եւ եմուտ ի տուն իւր, եւ խնդրեաց
հաց ուտել. եւ եդին առաջի նորա հաց,
21 եւ եկեր։ Եւ ասեն ցնա ծառայքն իւր,
Զի՞նչ է բանդ այդ զոր արարեր վասն
մանկանն. մինչդեռ կենդանին էր, պահէիր
եւ լայիր [4]եւ արթնէիր". եւ իբրեւ մեռաւ
մանուկն, յարեար կերար եւ արբեր։
22 Եւ ասէ Դաւիթ, Մինչդեռ կենդանի էր
մանուկն, պահէի եւ լայի. քանզի ասէի,
Ո՞ գիտէ, ողորմեսցի Տէր, եւ կեցցէ մա-
23 նուկն։ Արդ որովհետեւ մեռաւ մանուկն,
ես ընդէ՞ր պահիցեմ. միթէ կարօ՞ղ իցեմ
դարձուցանել զնա այսրէն. ես առ նա
երթալոց եմ, եւ նա առ իս ոչ դարձցի։
24 Եւ մխիթարեաց Դաւիթ զԲերսաբէէ
զկին իւր, եւ եմուտ առ նա եւ ննջեաց
ընդ նմա. եւ յղացաւ եւ ծնաւ որդի,
եւ կոչեաց զանուն նորա Սողոմոն. եւ
25 Տէր սիրեաց զնա։ Եւ առաքեաց ի ձեռն
Նաթանայ մարգարէի, եւ կոչեաց զա-
նուն նորա [5]Յեդեդի վասն Տեառն։
26 Եւ պատերազմեցաւ Յովաբ յՌաբաթ
որդւոցն Ամոնայ, եւ եհաս յառնուլ
27 զքաղաքն թագաւորութեանն։ Եւ առաք-
եաց Յովաբ հրեշտակս առ Դաւիթ եւ
ասէ, Պատերազմեցայ ընդ Ռաբա-
թայ, եւ հասի յառնուլ զքաղաքս ջրոց.
28 Եւ արդ ժողովեա զմնացորդս ժողովրդ-
եանդ, եւ բանակեացիս զքաղաքաւս եւ
առցես զսա. զի մի՛ ես առից զքաղաքս
եւ կոչեսցի անուն իմ ի վերայ սորա։
29 Եւ ժողովեաց Դաւիթ զամենայն ժո-
ղովուրդն եւ չոգաւ յՌաբաթ, եւ պա-
30 տերազմեցաւ ընդ նմա եւ առ զնա։ Եւ
առ զպսակն [6]Մեղքոմայ թագաւորին
նոցա" ի գլխոյ նորա. եւ կշիռ նորա
տաղանդ մի ոսկւոյ, եւ ականց պա-
տուականաց. եւ էր ի գլուխ Դաւթի.
եւ զաւ քաղաքին եհան բազում յոյժ։
31 Եւ զժողովուրդն որ էր ի նմա՝ եհան ար-
տաքս, եւ արկ ընդ օղոցաւ եւ ընդ քերանօք
երկաթեօք, եւ [7]չրջեցուցանէր զնոսա ա-
ղիւսով". եւ այնպէս առնէր ընդ ամենայն
քաղաքս որդւոցն Ամոնայ. եւ դարձաւ
Դաւիթ եւ ամենայն զօրն յԵրուսաղէմ։

ԳԼ. ԺԳ

1 Եւ եղեւ յետ այնորիկ, եւ Աբիսողո-
մայ որդւոյ Դաւթի էր քոյր մի յոյժ գե-
ղեցիկ տեսլեամբ, եւ անուն նորա Թա-
մար. եւ սիրեաց զնա Ամոն որդի Դաւ-
2 թի։ Եւ նեղէր Ամոն մինչեւ հիւան-
դանալ նմա վասն Թամարայ քեռ իւրոյ.
զի կոյս էր նա, եւ ծանր էր յաչս Ամոնի
3 առնել ինչ նմա։ Եւ էր ընկեր Ամոնայ,
եւ անուն նորա Յովնադաբ, որդի Սա-
մայ եղբօր Դաւթի. եւ Յովնադաբ այր
4 իմաստուն յոյժ։ Եւ ասէ ցնա, Զի՞ է
զի այդպէս նիհարիս, որդի արքայի, այ-
գուն այգուն եւ ոչ պատմես ինձ։ Եւ
ասէ ցնա Ամոն, զԹամար զքոյր Աբի-
5 սողոմայ եղբօր իմոյ սիրեմ ես։ Եւ ա-
սէ ցնա Յովնադաբ, Ննջեա ի մահիճս
քո եւ հիւանդացիր, եւ մտցէ հայր քո
տեսանել զքեզ. եւ ասասցես ցնա,
Մտցէ Թամար քոյր իմ եւ տացէ ինձ
[8]խիւս. եւ արասցէ առաջի աչաց իմոց
կերակուր, զի տեսից եւ կերայց ի ձե-
6 ռաց նորա։ Եւ [9]անկաւ Ամոն եւ հիւան-
դացաւ". եւ եմուտ արքայ տեսանել զնա.
եւ ասէ Ամոն ցարքայ, Եկեսցէ Թամար
քոյր իմ առ իս, եւ արասցէ առաջի իմ

[1] Եբրայեցին յաւելու, եւ ագաւ եւ [2] Եբր. ծերք
[3] Եբր. Տեառն [4] Յեբր. պակասէ [5] Եբր. Յեդե-
դիա, այսինքն՝ սիրելի Տեառն

[6] Եբրայեցին ունի փոխ Մեղքոմ որ նշանակէ թա-
գաւոր նոցա [7] Եբր. ընդ տապարօք, եւ
անցոյց զնոսա ընդ հնոց աղիւսոյ [8] Եբր. ուտել
հաց [9] Եբր. ընկողմնեցաւ Ամոն եւ խօթա-
պատճառ եղեւ

¹կերակուր բլիթս, եւ կերայց ի ձեռաց
7 նորա։ Եւ առաքեաց Դաւիթ առ Թամար
ի տուն եւ ասէ, Երթ ի տուն Ամնոնի
եղբօր քո, եւ արա նմա կերակուր։
8 Եւ գնաց Թամար ի տուն Ամնոնի եղբօր
իւրոյ. եւ նա անկեալ դնէր. եւ առ
հայս եւ թրեաց, եւ արար առաջի նորա
9 բլիթս, եւ եփեաց զբլիթսն. Եւ առ
զտապակն եւ թափեաց առաջի նորա.
եւ ոչ կամեցաւ ուտել. եւ ասէ Ամնոն,
Հանէք զամենայն այր յինէն արտաքս.
եւ հանին արտաքս զամենայն այր ի նմա-
10 նէ։ Եւ ասէ Ամնոն ցԹամար, Տար զկոր-
տիկդ ի սենեակ, եւ կերայց ի ձե-
ռաց քոց։ Եւ առ Թամար զբլիթսն զոր
արար, եւ տարաւ Ամնոնի եղբօր իւրում
11 ի սենեակն, Եւ մատոյց նմա ուտել։ Եւ
նա բուռն եհար զնմանէ եւ ասէ ցնա,
12 Եկ ննջեա ընդ իս, քոյր իմ։ Եւ ասէ
ցնա, Մի՛, եղբայր իմ, մի՛ տառապե-
ցուցաներ զիս. զի ոչ գործի այդպիսի
ինչ ի մէջ Իսրայելի, եւ մի՛ առներ զայդ
13 անզգամութիւն։ Եւ ես յո՞ տանիցիմ
զնախատինս իմ. եւ դու լինիցիս իբրեւ
զմի յանզգամաց ի մէջ Իսրայելի. եւ
արդ խօսեաց ընդ արքայի, եւ ոչ ար-
14 գելու զիս ի քէն։ Եւ ոչ կամեցաւ
Ամնոն լսել ձայնի նորա. եւ բռնահար-
եաց եւ բռնադատեաց զնա, եւ տա-
ռապեցոյց զնա եւ ննջեաց ընդ նմա։
15 Եւ ատեաց զնա Ամնոն ատելութիւն մեծ
յոյժ. զի մեծ էր ատելութիւնն զոր ատ-
եաց զնա ²եւ անհնարին վերջին ա-
ղէտքն՚՚ քան զառաջին սէրն զոր սիր-
եաց զնա. եւ ասէ ցնա Ամնոն, Արի
16 գնա։ Եւ ասէ ցնա Թամար, ³Մեծ են
չարիքս այս քան զայն զոր արարեր
ընդ իս, արձակել քո զիս. եւ ոչ կա-
17 մեցաւ Ամնոն լսել ձայնի նորա։ Եւ կո-
չեաց զպատանին ⁴իւր զվերակացու տան
իւրոյ՚՚, եւ ասէ ցնա, Հան զդա յինէն
արտաքս, եւ փակեա զդուրսդ զկնի դո-
18 րա։ Եւ էր զնովաւ ⁵պարեգօտ ասղնա-
գործք եւ կոճկէնք՚՚, զի այնպէս զդե-
նուլին զստերք թագաւորաց կոյսք զձորձս
իւրեանց. եւ եհան զնա սպասաւորն
արտաքս, եւ փակեաց զդուրսն զկնի
19 նորա։ Եւ առ Թամար մոխիր եւ արկ
զգլխով իւրով, եւ ⁶զպարեգօտն կոճ-
կէնս՚՚ զոր զգեցեալ էր՝ պատառեաց,
եւ եդ զձեռս իւր ի վերայ գլխոյ իւրոյ,
20 եւ երթայր երթալով եւ լայր։ Եւ ասէ
ցնա Աբիսողոմ եղբայր նորա, Միթէ
Ամնո՞ն եղբայր քո եղեւ ընդ քեզ. եւ
արդ, քոյր իմ, լուռ կաց, զի եղբայր
քո է, մի՛ ածեր զմտաւ քով խօսել
զբանդ զայդ. եւ նստաւ Թամար ⁷այրու-
թեամբ ի տան Աբիսողոմայ եղբօր իւ-
21 րոյ։ Եւ լուաւ ⁸արքայ զբանս զայսոսիկ
եւ բարկացաւ յոյժ. ²եւ ոչ տրտմեցոյց
զոգի Ամնոնայ որդւոյ իւրոյ զի սիրէր
22 զնա, զի անդրանիկ նորա էր։՚՚ Եւ ոչ
խօսեցաւ Աբիսողոմ ընդ Ամնոնայ ի չարէ
մինչեւ ցբարի. զի ատեայր Աբիսողոմ
զԱմնոն վասն բանին զոր տառապեցոյց
զԹամար զքոյր նորա։
23 Եւ եղեւ յետ ⁹երկեմնոյ աւուրց, եւ էին
կտուրք Աբիսողոմայ ¹⁰ի Բեթմարոն մերձ
յԵփրեմ. եւ կոչեաց Աբիսողոմ զամե-
24 նայն որդիսն արքայի։ Եւ եկն Աբիսո-
ղոմ առ արքայ եւ ասէ ցնա, Ահաւա-
նիկ կտուրք են ծառայի քում, երթիցէ
արքայ եւ ծառայք իւր ընդ ծառայի քում։
25 Եւ ասէ արքայ ցԱբիսողոմ, Մի՛, որդ-
եակ իմ, մի՛ երթիցուք ամենեքեան
մեք, եւ մի՛ ծանրասցուք քեզ. եւ
ստիպեաց զնա, եւ ոչ կամեցաւ երթալ,
26 եւ օրհնեաց զնա։ Եւ ասէ Աբիսողոմ,
Ապա թէ ոչ՝ գոնէ եկեսցէ ընդ իս Ամնոն
եղբայր իմ. եւ ասէ արքայ, Ընդէ՞ր
27 երթիցէ ընդ քեզ Ամնոն։ Եւ ստիպեաց
զնա Աբիսողոմ, եւ արձակեաց ընդ նմա
զԱմնոն եւ զամենայն զորդիսն արքայի։
²Եւ արար Աբիսողոմ խրախութիւն ըստ
28 խրախութեան թագաւորի։՚՚ Եւ պատ-
ուէր ետ Աբիսողոմ մանկտւոյ իւրում
եւ ասէ, Տեսէք, յորժամ զուարթասցի
սիրտն Ամնոնայ ի գինւոյ, եւ ասացից
ձեզ, Հարէք զԱմնոն եւ սպանէք զնա,
մի՛ երկնչիք. զի ո՞չ ապաքէն ես իցեմ
որ հրամայեցից ձեզ. քաջալերեցարուք
29 եւ լերուք յորդիս զօրութեան։ Եւ ա-
րարին մանկտին Աբիսողոմայ Ամնոնի
որպէս հրամայեաց նոցա Աբիսողոմ. եւ
յարեան ամենայն որդիք արքայի, եւ
հեծան այր իւրաքանչիւր ի ջորւոջ իւ-
30 րում եւ փախեան։ Եւ եղեւ մինչդեռ
նոքա էին ի ճանապարհին, զոյժ եկն առ
Դաւիթ եւ ասեն, Կոտորեաց Աբիսո-

¹Եբր. երկուս ²Յեբր. պ—ւ—է ³Եբր. Մի՛ այդ-պէս, մեծ ⁴Եբր. զպատանեակ իւր ⁵Եբր. պարե-գօտ գոյնագոյն ⁶Եբր. զպարեգօտն գոյնագոյն

⁷Եբր. անմխիթար ⁸Եբր. արքայ Դաւիթ ⁹Եբր. երկեմնոյ ¹⁰Եբր. ի Բաաղ-Հասոր

զոմ զամենայն որդիս արքայի, եւ ոչ
31 եթող ի նոցանէ եւ ոչ մի։ Յարեաւ
արքայ, պատառեաց զհանդերձս իւր, եւ
անկաւ ի վերայ գետնոյ. եւ ամենայն
ծառայք նորա կային չուրջ զնովաւ պա-
32 տառեալ զհանդերձս իւրեանց։ Պատաս-
խանի ետ Յովնադաբ որդի Սամաայ եղ-
բօր Դաւթի եւ ասէ, Մի՛ ասասցէ տէր
իմ [1]արքայ եթէ ամենայն որդիք արքայի
մեռան, զի Ամոն միայն մեռաւ. քանզի
ի բերան Աբիսողոմայ կայր, յօրէ յորմէ
տառապեցոյց զԹամար զքոյր նորա։
33 Եւ արդ մի՛ դիցէ [2]արքայ ի սրտի
իւրում զբանդ եւ ասասցէ թէ Ամենայն
որդիքն արքայի մեռան. այլ զի Ամոն
34 միայն մեռաւ։ Եւ փախեաւ Աբիսողոմ։
Եւ եբարձ պատանին դէտն զաչս իւր
եւ ետես, եւ ահա ժողովուրդ բազում
գայր ընդ ճանապարհն ի Նմանէ առ կող-
մամբ լերինն [1]ընդ զառ ի վայրն. եւ
եկն դէտն պատմեաց արքայի եւ ասէ.
Տեսի արս ի ճանապարհին Որոնեիմայ
35 առ կողմամբ լերինն"։ Եւ ասէ Յովնա-
դաբ ցարքայ, Ահա որդիք արքայի եկին.
ըստ բանի ծառայի քո նոյնպէս եղեւ։
36 Եւ իբրեւ վախճանեաց զխօսելն, եւ ահա
որդիքն արքայի եկին, եւ ամբարձին
զձայնս իւրեանց եւ լացին. այլ եւ ար-
քայ եւ ամենայն ծառայք իւր լացին
37 լալիւն մեծ յոյժ։ Եւ Աբիսողոմ փախ-
եաւ, եւ չոգաւ առ Թողմեղեմ որդի
Եմիուդայ արքայի Գեսուրայ [1]յերկիր
Մաքուլայ". եւ սուգ առ Դաւիթ ար-
քայ ի վերայ որդւոյն իւրոյ զամենայն
38 աւուրս։ Եւ Աբիսողոմ փախեաւ եւ
գնաց ի Գեսուր, եւ էր անդ ամս երիս։
39 Եւ [3]դադարեաց արքայ Դաւիթ յելանե-
լոյ ի վերայ Աբիսողոմայ", քանզի մխի-
թարեցաւ ի վերայ Ամոնայ որ մեռաւն։

## ԳԼ. ԺԴ

1 Եւ իմացաւ Յովաբ որդի Շարուհեայ,
եթէ է սիրտ արքայի ի վերայ Աբիսո-
2 ղոմայ։ Առաքեաց Յովաբ ի Թեկուէ,
եւ առ անտի կին մի իմաստուն, եւ
ասէ ցնա, Սուգ առ եւ զգեցիր հան-
դերձ սգոյ. մի՛ օծանիցիս իւղով, եւ
եղիցես իբրեւ զկին մի սգացեալ ի վե-
3 րայ բազմօրեայ մեռելոյ։ Եւ եկեսցես
առ արքայ, եւ խօսեսցիս ընդ նմա ըստ
բանիս ըստ այսմիկ. եւ եդ Յովաբ բանս
4 ի բերան նորա։ Եմուտ կինն Թեկուա-
ցի առ արքայ, եւ անկաւ ի վերայ երե-
սաց իւրոց ի գետին[4], եւ ասէ, Ապրեցո
5 [1]զիս արքայ, [1]ապրեցո։ Եւ ասէ ցնա
արքայ, Զի՞ է քեզ։ Եւ նա ասէ, [1]Կարի
իսկ տարնալ է ինձ." կին մի այրի եմ
6 ես. մեռաւ այր իմ. Եւ աղախնոյ քո
երկու որդիք էին, մարտեան ընդ մի-
մեանս երկոքեան յանդի. եւ ոչ ոք էր
որ համոզէր ի մէջ նոցա, եւ եհար մին
7 զմիւս եղբայրն եւ սպան զնա։ Եւ ահա
յարուցեալ է ամենայն ազգն ի վերայ
աղախնոյ քո, ասեն, Տուր զսպանողն
եղբօր իւրոյ, եւ սպանցուք զնա փո-
խանակ անձին եղբօր իւրոյ, եւ բարձ-
ցուք զժառանգակալն [1]քո. եւ շիջու-
ցանիցեն զկայծակն իմ զմնացեալ, առ
ի չթողլոյ առն իմում մնացորդ եւ ա-
8 նուն ի վերայ երեսաց երկրի։ Եւ ասէ
արքայ[5], Երթ [1]ողջամբ ի տուն քո, եւ
9 ես պատուիրեցից վասն քո։ Եւ ասէ
կինն Թեկուացի[6], Յիմ վերայ, արքայ,
անօրէնութիւնն, եւ ի վերայ տան հօր
իմոյ, եւ արքայ եւ աթոռ իւր քաւեալ։
10 Եւ ասէ արքայ, Ո՞վ է որ խօսեսցի ընդ
քեզ, եւ ածցես զնա առ իս եւ ոչ եւս
11 մերձեսցի առ քեզ։ Եւ ասէ, Յիշեսցէ
արքայ զՏէր Աստուած իւր, ի յաճախել
մերձաւորի արեանն ապականել. մի՛
ջնջեսցեն զորդեակն իմ։ Եւ ասէ Դա-
ւիթ, Կենդանի է Տէր եթէ անկցի ի
12 հերոյ որդւոյ քո մազ մի ի գետին։ Եւ
ասէ կինն, Խօսեսցի աղախին քո ա-
ռաջի Տեառն իմոյ արքայի բան մի. եւ
13 ասէ, Խօսեաց։ Եւ ասէ կինն, Ընդէ՞ր
խորհեցար այդպիսի ինչ ի վերայ ժողո-
վրդեանն Աստուծոյ [7]կամ թէ ի բերա-
նոյ արքայի՞ իցէ բանն այն վնասու՝
չդարձուցանել արքայի զմերժեալն յիւրմէ.
14 Զի մահու մեռանիցի, եւ իբրեւ զջուր
հեղեալ յերկիր ոչ ամփոփիցի, եւ ոչ
առնուցու Աստուած զոգին, եւ խորհիցի
15 ոք մերժել" յինքենէ զմերժեալն։ Եւ
արդ եկի խօսել առ արքայի տեառն

[1] Եբր. գոլոտ [2] Եբր. տէր իմ արքայ [3] Եբր. ցանկայր արքայ Դաւիթ ելանել առ Աբիսողոմ

[4] Եբր. յաւելու, և երկիր եպագ նմա [5] Եբր. յաւելու, ցկինն [6] Եբր. յաւելու, ցարքայ
[7] Եբր. զի ի խօսել արքայի զբանս զայս՝ լինի իբրև յանցուցեալ, քանզի ոչ դարձուցանէ արքայ զմերժեալն իւր. (14) Զի մահու մեռանելոց եմք, և եմք իբրև զջուր հեղեալ յերկիր որ ոչ ամփոփիցի. և ոչ առնու Աստուած զոգին, այլ հնարի հնարս առ ի չմերժելոյ

իմոյ զբանս զայս. զի ¹տեսանիցէ զիս
ժողովուրդն եւ ասիցէ, թէ աղախին
քո խօսեցաւ" ընդ արքայի, թերեւս
արասցէ արքայ զբան աղախնոյ իւրոյ.
16 Զի լուիցէ արքայ եւ փրկեսցէ զիս ի
ձեռաց առնն, որ խնդրէ ջնջել զիս եւ
զորդի իմ ի ժառանգութենէ Աստուծոյ։
17 Եւ ²ասէ կինն", Եղիցի բան տեառն իմոյ
արքայի ³ի զոհս, զի իբրեւ զհրեշտակ
Աստուծոյ այնպէս է տէր իմ արքայ ի
լսել զբարի եւ զչար. եւ Տէր Աստուած
18 քո եղիցի ընդ քեզ։ Եւ պատասխանի
ետ արքայ եւ ասէ ցկինն, Մի թաքու-
ցաներ յինէն զբան զոր ես հարցից քեզ։
Եւ ասէ կինն, Խօսեսցի տէր իմ արքայ։
19 Եւ ասէ արքայ, Միթէ ձեռն Յովաբայ
իցէ՞ յամենայնի յայդմիկ ընդ քեզ. եւ
ասէ կինն ցարքայ, Կենդանի է անձն
քո, տէր իմ արքայ, եթէ իցէ յաջ կամ
յահեակ յամենայնէ զոր խօսեցաւ տէր
իմ արքայ. զի ծառայ քո Յովաբ՝ նա
պատուիրեաց ինձ, եւ նա եդ ի բերան
աղախնոյ քո զամենայն բանս զայսոսիկ,
20 վասն բոլորելոյ երեսաց բանիս այսորիկ՝
զոր արար ծառայ քո Յովաբ զբանս
զայսոսիկ, եւ տէր իմ իմաստուն է ըստ
իմաստութեան հրեշտակի Աստուծոյ՝
գիտել զամենայն ինչ որ յերկրի։
21 Եւ ասէ արքայ ցՅովաբ, Ահաւասիկ
արարի քեզ ըստ բանի քում ըստ այդ-
միկ. երթ դարձո ած զպատանեակն
22 զԱբիսողոմ։ Եւ անկաւ Յովաբ ի վերայ
երեսաց իւրոց յերկիր եւ երկիր եպագ
նմա, եւ օրհնեաց զարքայ. եւ ասէ Յովաբ,
Այսօր գիտաց ծառայ քո եթէ գտի շնորհս
յաչս քո, տէր իմ արքայ, զի արար տէր իմ
23 արքայ զբան ծառայի իւրոյ։ Եւ յարեաւ
Յովաբ եւ գնաց ի Գեսուր, եւ ած զԱ-
24 բիսողոմ յԵրուսաղէմ։ Եւ ասէ արքայ,
Դարձցի ի տուն իւր, եւ զերեսս իմ մի՛
տեսցէ։ Եւ դարձաւ Աբիսողոմ ի տուն
իւր, եւ զերեսս արքայի ոչ ետես։
25 Եւ իբրեւ զԱբիսողոմ ոչ գոյր յամե-
նայն Իսրայէլի այր գեղեցիկ գովելի յոյժ.
ի թաթից ոտից իւրոց մինչեւ ի գլուխ
26 իւր ոչ գոյր ի նմա արատ։ Եւ ի փոք-
րել զհերս իւր ⁴լինէր ի սկսանելոյ աւուրց
յաւուրս" փոքրել, զի կարի ծանրանայր
ի վերայ նորա, եւ ⁵յորժամ փոքրէր, եւ
կշռէր զհեր գլխոյ իւրոյ երկերիւր սիկղ
27 ըստ արքունական սկեղ։ Եւ ծնան Ա-
բիսողոմայ երեք ուստերք եւ դուստր
մի եւ անուն նորա Թամար. եւ նա էր
կին գեղեցիկ յոյժ տեսլեամբ ⁵եւ եղեւ
կին Ռոբովամայ որդւոյ Սողոմոնի, եւ
ծնաւ նմա զԱբիա"։
28 Եւ նստաւ Աբիսողոմ յԵրուսաղէմ
աւուրս ամաց երկուց, եւ զերեսս ար-
29 քայի ոչ ետես։ Եւ առաքեաց Աբիսո-
ղոմ առ Յովաբ յղել զնա առ արքայ.
եւ ոչ կամեցաւ երթալ առ նա. եւ ա-
ռաքեաց երկրորդ անգամ առ նա, եւ
30 ոչ կամեցաւ երթալ։ Եւ ասէ Աբիսողոմ
ցծառայս իւր, Գիտէք զվիճակ գեղջ
Յովաբայ, լի գարւով մօտ է առ իմ.
երթայք այրեցէք զնա հրով։ Եւ այրեցին
ծառայքն Աբիսողոմայ զվիճակն Յովա-
բայ հրով։ ⁵Եւ եկին ծառայքն Յովա-
բայ առ նա պատառեալ զհանդերձս իւ-
րեանց, եւ ասեն, Այրեցին ծառայքն
31 Աբիսողոմայ զվիճակն հրով։" Եւ յար-
եաւ Յովաբ եւ եկն առ Աբիսողոմ ի
տուն եւ ասէ ցնա, Ընդէ՞ր այրեցին ծա-
32 ռայք քո զվիճակն իմ հրով։ Եւ ասէ
Աբիսողոմ ցՅովաբ, Յղեցի առ քեզ եւ
ասեմ, Եկ այսր յղեցից զքեզ առ ար-
քայ, ասել՝ թէ Ընդէ՞ր եկի ի Գեսուրայ,
լաւ էր ինձ տակաւին անդ լինել ⁶քան
ոչ տեսանել" զերեսս արքայի, եւ եթէ
33 մեղս ինչ կայցէ յիս, ⁷սպան զիս։ Եւ
եմուտ Յովաբ առ արքայ եւ պատմեաց
նմա. եւ կոչեաց զԱբիսողոմ. եւ եմուտ
առ արքայ եւ երկիր եպագ նմա, եւ
անկաւ ի վերայ երեսաց իւրոց յերկիր
առաջի արքայի. եւ համբուրեաց ար-
քայ զԱբիսողոմ։

## ԳԼ. ԺԵ

1 Եւ եղեւ յետ այնորիկ եւ արար Աբի-
սողոմ կառս եւ երիվարս, եւ յիսուն
2 այր սուրհանդակ առաջի իւր։ Եւ կան-
խէր Աբիսողոմ եւ կայր առ ճանապարհի
դրանն. եւ լինէր ամենայն այր որոյ էր
դատ գալ առ արքայ ի դատաստան,
բարբառէր առ նա Աբիսողոմ եւ ասէր
ցնա, Յորմէ՞ քաղաքէ ես դու. եւ ասէր
այրն, Ի միոյ ի ցեղիցն Իսրայէլի է ծա-
3 ռայ քո. Եւ ասէ ցնա Աբիսողոմ, Ահա

¹ Եբր. երկեցայց զիս ժողովուրդն. եւ ասէ աղախին քո, Խօսեցայց ² Եբր. ասաց աղախին քո ³ Եբր. ի հանգիստ լոյ, ի մխիթարութիւն ⁴ Եբր. եւ լինէր ի վախճանել տարւոյն

⁵ Ց Եբր. [illegible] ⁶ Եբր. եւ արդ տեսից ⁷ Եբր. սպանցէ

բանք քո բարիք են եւ դիւրինք, եւ որ
ունկնդիր լինիցի քեզ՝ չիք առ ի յար-
4 քայէ։ Եւ ասէր Աբիսողոմ, Ո՞ կացու-
ցանէր զիս դատաւոր ի վերայ երկրիս,
եւ առ իս գայր ամենայն այր որոյ էր
հակառակութիւն եւ դատաստան, եւ
5 առնէի նմա իրաւունս։ Եւ լինէր յոր-
ժամ մերձենայր առ նա այր երկիր պա-
գանել նմա, ձգէր զձեռն իւր եւ առ
ինքն մատուցանէր, եւ համբուրէր զնա։
6 Եւ առնէր Աբիսողոմ ըստ բանիս ըստ
այսմիկ ամենայն Իսրայելի եկելոց ի դա-
տաստան առ արքայ, եւ յանկուցանէր
յինքն Աբիսողոմ զսիրտս ամենայն ա-
րանց Իսրայելի։
7 Եւ եղեւ ի կատարել [1]չորից ամաց,
ասէ Աբիսողոմ [2]ցհայր իւր", Երթայց եւ
հատուցից զուխտս իմ զոր ուխտեցի
8 Տեառն ի Քեբրոն. Զի ուխտիւք ուխ-
տեաց ծառայ քո մինչ էի ի Գեսուր յԱ-
սորիս. ասեմ, Եթէ դարձուցանելով
դարձուցէ զիս Տէր յԵրուսաղէմ, պաշ-
9 տեցից զՏէր։ Եւ ասէ ցնա արքայ,
Երթ խաղաղութեամբ. եւ յարեաւ գնաց
10 ի Քեբրոն։ Եւ առաքեաց Աբիսողոմ
պատուիրակս յամենայն ցեղս Իսրայելի,
եւ ասէ, Ի լսել ձեր զձայն եղջեր փո-
ղոյ, ասասջիք եթէ Թագաւորեաց Թա-
11 գաւոր Աբիսողոմ ի Քեբրոն։ Եւ ընդ Աբի-
սողոմայ գնացին արք երկերիւր[3] հրաւի-
րեալք, եւ երթային միամտութեամբ,
12 եւ ոչ գիտէին ամենեւին զիրացն։ Եւ
առաքեաց Աբիսողոմ եւ կոչեաց զԱքի-
տոփէլ [4]Թեկուացի խորհրդակից Դաւթի
[5]ի քաղաք իւր ի Գովլա" ի զոհել իւրում
զզոհսն. եւ եղեւ [6]ժողով սաստիկ, եւ
ժողովուրդ բազում երթայր ընդ Աբի-
սողոմայ։
13 Եւ եհաս զուժկան առ Դաւիթ եւ
ասէ, Եղեւ սիրտ արանց Իսրայելի զհետ
14 Աբիսողոմայ։ Եւ ասէ Դաւիթ ցամե-
նայն ծառայս իւր որ ընդ նմա յԵրու-
սաղէմ, Արիք եւ փախիցուք. զի ոչ
գոյ մեզ փրկութիւն յերեսաց Աբիսո-
ղոմայ. փութացարուք գնալ, գի մի՛
արագիցէ եւ հասանիցէ մեզ, եւ արկա-
նիցէ ի վերայ մեր չարիս, եւ հարկա-
15 նիցէ զքաղաքս սրով սուսերի։ Եւ ասեն
ծառայքն արքայի ցարքայ, Ըստ ամե-
նայնի զոր եւ կամիցի տէր մեր արքայ՝
ահաւասիկ կամք ծառայք քո։
16 Եւ ել արքայ եւ ամենայն տուն նորա
ի հետիոտս. եւ եթող արքայ տասն կին
ի հարճից անտի իւրոց պահել զտունն։
17 Եւ ել արքայ եւ ամենայն ծառայք նորա
հետեւակք, եւ կացին [7]առ ձիթենեացն
18 որ յանապատի անդ"։ Եւ ամենայն ծա-
ռայք նորա մի ըստ միոջէ անցանէին
առ նովաւ, եւ ամենայն Քերեթին եւ
Ոփելեթին, եւ ամենայն Գեթացիք, վեց
հարեւր այր եկեալ հետեւակք ի Գեթայ,
19 անցանէին առաջի Դաւթի։ Եւ ասէ ար-
քայ ցԵթթի Գեթացի, Ընդէ՞ր գայցես եւ
դու ընդ մեզ. դարձիր անդրէն եւ բնակեա
ընդ արքայի, զի այր օտար ես դու, եւ
[8]խախտեցար ի տեղւոջէ քումմէ ի Գե-
20 թայ եւ եկիր", Եւ այսօր խախտիցե՞մ
զքեզ գնալ ընդ մեզ. եւ ես երթայց յո
եւ երթալոց իցեմ, բայց դու դարձիր
եւ դարձո զեղբարս քո ընդ քեզ. եւ
[9]արասցէ ընդ քեզ Տէր" ողորմութիւն
21 եւ ճշմարտութիւն։ Պատասխանի ետ
Եթթի արքայի եւ ասէ, Կենդանի է
Տէր, եւ կենդանի է տէր իմ արքայ, զի
ի տեղւոջ ուր տէր իմ արքայ իցէ, եւ
ի մահու եւ ի կենսն՝ անդ եղիցի եւ
22 ծառայ քո։ Եւ ասէ արքայ ցԵթթի, Եկ
անց [10]ընդ իս". եւ անց Եթթի Գեթացի,
եւ ամենայն ծառայք նորա եւ ամենայն
23 ամբոխ նորա ընդ նմա։ Եւ ամենայն
երկիրն լայր մեծաձայն, եւ ամենայն զօրն
անցանէր [10]ընդ հեղեղատն Կեդրոնի".
անց եւ արքայ ընդ հեղեղատն Կեդրոնի.
եւ ամենայն զօրն [11]եւ արքայ երթային"
ընդ երեսս ճանապարհին անապատի։
24 Եւ ահա Սադովկ եւ ամենայն Ղեւ-
տացիք ընդ նմա, բարձին զտապանակ
ուխտին [12]Տեառն ի Բեթարայ", եւ կա-
ցուցին զտապանակն Աստուծոյ. եւ ել
[13]ի Բեթարայ մինչեւ կատարեաց ամե-
նայն ժողովուրդն անցանել ի քաղաքէ
25 անտի։ Եւ ասէ արքայ ցՍադովկ, Դարձո
զտապանակդ Աստուծոյ ի քաղաք, եւ
նստցի ի տեղւոջ իւրում. եթէ գտից
շնորհս առաջի Տեառն՝ դարձուսցէ զիս,
եւ ցուցցէ ինձ զդա եւ զվայելչութիւն
26 դորա. Ապա թէ այսպէս ասասցէ ցիս

[1] Եբր. քառասուն [2] Եբր. ցարքայ [3] Եբր. կոչեցեալք յԵրուսաղեմէ [4] Եբր. Գեղոնացի [5] Եբր. ի քաղաքէ իւրմէ ի Գեղոնայ [6] Եբր. դաւն

[7] Եբր. ի Բեթմերհակ. այսինքն՝ ի հեռաւորին տան [8] Եբր. պանդուխտ. դարձիր ի տեղի քո։ (20) Եկիր երէկ [9] Եբր. ընդ քեզ [10] Եբր. [illegible] [11] Եբր. անցանէին [12] Եբր. Աստուծոյ [13] Եբր. Աբիաթար

թէ Զեմ հաճեալ ընդ քեզ, ահաւասիկ
կամ, արասցէ ինձ որպէս հաճոյ իցէ
27 առաջի աչաց նորա։ Եւ ասէ արքայ
ցՍադովկ քահանայ, [1]Տեսէք, զի դու
դառնաս՝ խաղաղութեամբ ի քաղաք,
եւ Աքիմաաս որդի քո եւ Յովնաթան
որդի Աբիաթարայ՝ երկորին որդիք ձեր
28 ընդ ձեզ։ Եւ ահա ես բանակեցայց [2]յԱրա-
բովթ անապատին, մինչեւ եկեսցէ գրոյց
29 ի ձէնջ պատմել ինձ։ Եւ դարձուցին
Սադովկ եւ Աբիաթար զտապանակն
[3]յԵրուսաղէմ, եւ նստաւ՝ անդ։
30 Եւ Դաւիթ ելանէր ընդ զառ ի վերն
Ձիթենեաց, ելանէր եւ լայր, եւ զգլուխ
իւր ծածկեալ. եւ ինքն երթայր բոկ.
եւ ամենայն ժողովուրդն ընդ նմա ձորձ
զգլխով, այր իւրաքանչիւր ելանէին եւ
31 լային։ Ազդ եղեւ Դաւթի եւ ասեն,
Եւ Աքիտոփէլ ընդ ժողովեալսն սա Ա-
բիսողոմայ է։ Եւ ասէ Դաւիթ, Ցրեա
զխորհուրդն Աքիտոփելայ, Տէր Ա-
32 ստուած իմ։ Եւ եհաս Դաւիթ ի [4]Հռովս
ուր եպագն երկիր Աստուծոյ. եւ ահա
ընդ առաջ նորա Քուսի Արաքացի [5]բա-
րեկամ Դաւթի՝ պատառեալ զպատմու-
33 ճան իւր եւ հող ի գլուխ նորա։ Եւ ասէ
ցնա Դաւիթ, Եթէ անցանիցես ընդ իս՝
34 բեռն լինիս ինձ. Ապա թէ դարձցիս ի
քաղաք, եւ ասասցես ցԱբիսողոմ, [5]Եթէ
Անցին եղբարք քո, եւ արքայ կաթո-
ղին էր զկնի իմ, եւ անց հայր քո. եւ
արդ՝ ծառայ քո եմ, արքայ, [5]եւ թող
կացից առաջի քո.՝ ծառայ հօր քո էի
յայնժամ, եւ արդ քո ծառայ եմ ես,
արքայ. եւ ցրեսցես յինէն զխորհուրդն
35 Աքիտոփելայ։ Եւ ահա ընդ քեզ Սա-
դովկ եւ Աբիաթար քահանայք. եւ ե-
ղիցի բան զոր լսիցես ի տանէ արքայի՝
պատմեսջիր Սադովկայ եւ Աբիաթարու
36 քահանայից։ Եւ ահա են ընդ նոսա եր-
կոքեան որդիք իւրեանց, Աքիմաաս
որդի Սադովկայ եւ Յովնաթան որդի
Աբիաթարայ. եւ առաքեսջիք ի ձեռն
նոցա առ իս զամենայն բան զոր եւ
37 լուիցէք։ Եւ եմուտ Քուսի բարեկամ
Դաւթի ի քաղաքն. եւ Աբիսողոմ մտա-
նէր [6]ի քաղաքն։

ԳԼ. ԺԶ

1 Եւ Դաւիթ անցեալ էր սակաւիկ ինչ
ըստ [4]Հռովս, եւ ահա Սիբա պատանի
Մեմփիբոսթեայ ընդ առաջ նորա, եւ
զոյգ իշոց բեռնաւորաց, եւ ի նոսա
երկերիւր նկանակ եւ հարիւր [7]չամչեաց
եւ հարիւր արմաւ եւ մար՝ մի գինւոյ։
2 Եւ ասէ արքայ ցՍիբա, Զի՞նչ է այդ։
Եւ ասէ Սիբա, Էշքդ [8]նստելոյ արքայի,
եւ հացդ եւ արմաւդ՝ ի կերակուր ման-
կանցդ, եւ գինիդ՝ ըմպելի լքելոցդ յա-
3 նապատի աստ։ Եւ ասէ արքայ, Ո՞ւր
է որդի տեառն քո։ Եւ ասէ Սիբա ցար-
քայ, Ահա նստի յԵրուսաղէմ. զի ասէ,
Այսօր դարձուսցեն ինձ տունն Իսրայելի
4 զթագաւորութիւն հօր իմոյ։ Եւ ասէ
արքայ ցՍիբա, Ահա քեզ լիցի ամենայն
ինչ որ է Մեմփիբոսթեայ։ Երկիր եպագ
Սիբա եւ ասէ, Գտի շնորհս առաջի քո,
տէր իմ արքայ։
5 Եւ եկն արքայ Դաւիթ մինչեւ ցԲաւ-
ուրիմ, եւ ահա ելանէր անտի այր
յազգականութենէ տանն Սաւուղայ, եւ
անուն նորա Սեմէի որդի Գերեայ. ելա-
6 նեալ ելանէր եւ անիծանէր. Եւ ձգէր
քարինս Դաւթի եւ ամենեցուն որոց
ընդ արքային Դաւթի. եւ ամենայն ժո-
ղովուրդն եւ ամենայն զօրաւորք էին
7 ընդ աջմէ եւ ընդ ահեկէ արքային։ Եւ
այսպէս ասէր Սեմէի յանիծանելն զնա,
Ել, ել, այր արեանց եւ այր անօրէն.
8 Դարձոյց ի քեզ Տէր զամենայն արիւնս
տանն Սաւուղայ, զի թագաւորեցեր
փոխանակ նորա. եւ ետ Տէր [9]զթագա-
ւորութիւն քո՝ ի ձեռս Աբիսողոմայ
որդւոյ քո. [10]եգոյց քեզ զչարիս քո՝,
9 զի այր արեանց ես դու։ Եւ ասէ Աբես-
սա որդի Շարուհեայ ցԴաւիթ, Ընդէ՞ր
անիծանէ այնպէս շուն մի մեռեալ զտէր
իմ զարքայ. անցից եւ առից զգլուխ
10 նորա։ Եւ ասէ արքայ, Զի՞ կայ իմ եւ
ձեր, որդիք Շարուհեայ. Թոյլ տուք նմա,
թող անիծանէ այնպէս. զի Տէր ասաց
նմա անիծանել զԴաւիթ. եւ ո՞վ ասասցէ
11 թէ Ընդէ՞ր արարեր այդպէս։ Եւ ասէ
Դաւիթ ցԱբեսսա եւ ցամենայն ծառայս
իւր, Ահաւասիկ որդի իմ որ ելեալ է

[1] Օրին. Ո՞չ տեսանող ես դու, դարձ
[2] Օրին. յանցս, կամ, ի դաշտս [3] Օրին. Աստուծոյ
յԵրուսաղէմ. եւ նստան [4] Օրին. Գագաթն
[5] Ց Օրին. [illegible] [6] Օրին. յԵրուսաղէմ

[7] Օրին. ողկոյզ չամչոյ, և հարիւր պտուղ ամարա-
յին եւ տիկ [8] Օրին. տանն արքայի ի հեծանել,
եւ հացդ եւ պտուղք [9] Օրին. զթագաւորու-
թիւնն [10] Օրին. եւ ահա դու ի չարի քում

յորովայնէ իմմէ՝ խնդրէ զանձն իմ, ո՜րչափ եւս որդին Յեմինայ. թոյլ տուք նմա եւ անիծցէ, զի Տէր ասաց նմա։
12 Թերեւս տեսցէ Տէր զտառապանս իմ, եւ հատուսցէ ինձ բարիս փոխանակ
13 անիծից նորա յաւուր յայսմիկ։ Եւ երթայր Դաւիթ եւ արքն որ ընդ նմա զճանապարհն, եւ Սեմէի երթայր մօտ առ նա ընդ կողոց լերինն, երթայր եւ անիծանէր, եւ քարինս ի կողմանէ նորա ընկենոյր, եւ հող ցանէր ի վերայ։
14 Եւ եկն արքայ եւ ամենայն զօրն որ ընդ նմա աշխատեալք, եւ հանգեան անդ։
15 Եւ Աբիսողոմ եւ ամենայն Իսրայէլ մտին յԵրուսաղէմ, եւ Աքիտոփէլ ընդ
16 նմա։ Եւ եղեւ իբրեւ եկն Քուսի Արաքացի բարեկամ Դաւթի առ Աբիսողոմ, եւ ասէ Քուսի ցԱբիսողոմ, Կեցցէ
17 արքայ[1]։ Եւ ասէ Աբիսողոմ ցՔուսի, Ա՞յդ գութ էր քո ընդ բարեկամին քում. ընդէ՞ր ոչ չոգար ընդ բարեկամին քում։
18 Եւ ասէ Քուսի ցԱբիսողոմ, Ոչ այդպէս է, այլ զհետ այնորիկ զոր ընտրեաց Տէր եւ ժողովուրդս այս եւ ամենայն այր Իսրայելի՝ երթայց, եւ նորա եղէց
19 եւ ընդ նմա նստայց։ Եւ երկրորդ անգամ՝ ո՞ւմ ծառայեցից ես, ո՞չ առաջին առաջի որդւոյ նորա. որպէս ծառայեցի առաջի հօր քո, նոյնպէս եղէց առաջի քո։
20 Եւ ասէ Աբիսողոմ ցԱքիտոփէլ, Առէք խորհուրդ ի մէջ թէ զինչ գործես-
21 ջուք։ Եւ ասէ Աքիտոփէլ ցԱբիսողոմ, Մուտ առ հարճս հօր քո զորս եթող պահել զտունն իւր, եւ լուիցէ ամենայն Իսրայէլ թէ յամօթ արարեր զհայր քո. եւ զօրասցին ձեռք ամենեցուն որք են
22 ընդ քեզ։ Եւ հարին վրան Աբիսողոմայ ի տանիս, եւ եմուտ Աբիսողոմ առ հարճս հօր իւրոյ յանդիման ամենայն Իսրայե-
23 լի։ Եւ խորհուրդ Աքիտոփելայ զոր խորհէր յաւուրսն [2]առաջինս, որպէս թէ հարցանիցէ ոք բան յԱստուծոյ, այնպէս էր ամենայն խորհուրդն Աքիտոփելայ եւ առ Դաւթի եւ առ Աբիսողոմայ։

ԳԼ. ԺԷ

1 Եւ ասէ Աքիտոփէլ ցԱբիսողոմ, Ընտրեցից ինձ երկոտասան հազար արանց, եւ յարեայց եւ պնդեցայց զհետ Դաւթի
2 զցայգս, Եւ հասից ի վերայ նորա [3]զցայգ. եւ նա աշխատեալ է եւ լքեալ ձեռօք, եւ զարհուրեցուցից զնա, եւ փախիցէ զօրն որ ընդ նմա. եւ [4]սպանից զարքայ
3 միայն։ Եւ դարձուցից զամենայն զօրն առ քեզ, [5]զոր օրինակ դառնայցէ հարսն առ այր իւր. բայց միայն զանձն միոյ առն խնդրեսցես", եւ ամենայն զօրն ե-
4 ղիցի ի խաղաղութեան։ Եւ ուղիղ թուեցաւ բանն առաջի Աբիսողոմայ եւ առաջի ամենայն ծերոցն Իսրայելի։
5 Եւ ասէ Աբիսողոմ, կոչեցէք զՔուսի Արաքացի, եւ լուիցուք թէ զինչ կայ-
6 ցէ ի բերան նորա։ Եւ եմուտ Քուսի առ Աբիսողոմ, եւ խօսեցաւ Աբիսողոմ ընդ նմա ըստ բանիցն այնորիկ զոր խօսեցաւ Աքիտոփէլ. եւ ասէ, թէ Արասցո՞ւք ըստ բանի նորա, ապա թէ ոչ, եւ դու խօ-
7 սեաց ինչ։ Եւ ասէ Քուսի ցԱբիսողոմ, Ոչ է բարւոք խորհուրդն զոր խորհեցաւ
8 Աքիտոփէլ այս անգամ։ Եւ ասէ Քուսի, Դու ինքնին գիտես զհայր քո եւ զարս նորա, զի կարի զօրաւորք են յոյժ, եւ դառնացեալք ոգւով իբրեւ զարջ մի որդեկորոյս ի վայրի [3]եւ զայրացեալ ի դաշտի". եւ հայր քո այր պատերազմող,
9 եւ ոչ [6]տայ դուլ" զօրուն. Եւ ահա ինքն գողեալ իցէ ի միում [7]ի բլրոց կամ ի միում ուրեք ի տեղեաց. եւ եղիցի յանկանել [8]ի վերայ նոցա զառաջինն հարկանիցէ", եւ լուիցէ որ լսիցէ, եւ ասիցէ թէ եղեւ խորտակումն ժողովրդեանն
10 որ զկնի Աբիսողոմայ։ Բանզի եւ նա այր զօրութեան է, որոյ սիրտն իբրեւ զսիրտ առիւծու, հաչելով հաչիցի. զի գիտէ ամենայն Իսրայէլ թէ զօրաւոր է հայր քո, եւ որդիք զօրութեան որ ընդ
11 նմայն են։ Ես այսպէս տամ քեզ խրատ. ժողովելով ժողովեսցի ամենայն այր Իսրայելի ի Դանայ մինչեւ ցԲերսաբէէ իբրեւ զաւազ առ եզր ծովու բազմութեամբ,
12 եւ քո երեսք երթիցեն ի մէջ նոցա։ Եւ հասցուք ի վերայ նորա ի միում ի տեղեաց ուր եւ գտանիցեմք զնա անդ. եւ պատեսցուք զնովաւ, որպէս իջանիցէ ցօղ ի վերայ երկրի, եւ ոչ ապրեցուսցուք
13 [9]զնորա եւ ոչ զոք։ Ապա թէ ի

[1] Եբր. կրկին յաւելու, կեցցէ արքայ [2] Եբր. յայնորիկ

[3] Եբր. գիշերի [4] Եբր. հարից [5] Եբր. իբրեւ դառնայ ամենեցուն է այրն զոր դու խնդրես [6] Եբր. ագանի ընդ [7] Եբր. ի խորոց [8] Եբր. ի սոսա զառաջինն [9] Եբր. զնա եւ յամենայն արանց որ ընդ նմա

քաղաք մտանիցէ, առցէ ամենայն Իս-
րայէլ քաղաքին այնմիկ պարանս, և
քարշեսցուք [1]զնոսա մինչև ցհեղեղատն.
14 զի մի՛ մնասցէ անդ և մի՛ մի քար։ Եւ
ասէ Աբիսողոմ և ամենայն այր Իսրա-
յէլի, Բարւոք է խորհուրդ Քուսեայ Արա-
քացւոյ քան զխորհուրդ Աքիտոփելայ։
Եւ Տէր ետ հրաման ցրել զբարւոք խոր-
հուրդն Աքիտոփելայ, զի ածցէ Տէր ի
վերայ Աբիսողոմայ զամենայն չարիսն։
15 Եւ ասէ Քուսի Արաքացի ցՍադովկ
և ցԱբիաթար քահանայս, Զայս ինչ և
զայս խրատ ետ Աքիտոփէլ Աբիսողո-
մայ և ծերոց Իսրայէլի, և զայս ինչ
16 և զայս ես [2]խորհեցայ. Եւ արդ առա-
քեցէք վաղվաղակի և պատմեցէք Դաւ-
թի և ասացէք, Մի՛ ագանիցիս զայս
գիշեր [3]յԱրաբովթ անապատին, այլ փու-
թապէս անցանել, գուցէ կլանիցէ զար-
քայ և զամենայն ժողովուրդն որ ընդ
17 նմա։ Եւ Յովնաթան և Աքիմաաս կա-
յին առ աղբերն Ռովգելայ, և չոգաւ
աղախին մի և պատմեաց նոցա, և
նոքա գնային և պատմեցին զայս ար-
քային Դաւթի. զի ոչ կարէին մտանել
18 երևել ի քաղաքին։ Եւ եսես զնոսա
պատանեակ մի, և պատմեաց Աբիսո-
ղոմայ. և չոգան երկոքին[4], և մտին
ի տուն առն միոյ ի Բաւուրիմ, և նո-
րա էր ջուր մի [5]ի տան, և մտին անդր։
19 Եւ ա՛ռ կինն և [6]կափոյց զխուփն" ի վե-
րայ ջրին, և ցամաքեցուցանէր ի վե-
րայ նորա [7]արաբովթ. և ոչ եղ բանն ի
20 վեր։ Եւ եկին ծառայքն Աբիսողոմայ
առ կինն ի տուն անդր, և ասեն, Ո՞ւր
են Աքիմաաս և Յովնաթան։ Եւ ասէ
ցնոսա կինն, Անցին յայնկոյս ջրոյդ։ Եւ
նոքա խնդրեցին զնոսա և ոչ գտին,
21 և դարձան յԵրուսաղէմ։ Եւ եղև յետ
գնալոյն նոցա, ելին ի գբոյն և չոգան
պատմեցին արքային Դաւթի, և ասեն
ցԴաւիթ, Արիք և անցէք[8] բառ ջուրդ.
զի զայս ինչ և զայս խորհեցաւ վասն
22 ձեր Աքիտոփէլ։ Եւ յարեաւ Դաւիթ և
ամենայն ժողովուրդն որ ընդ նմա, և
անցին ընդ Յորդանան մինչև ի լուսա-
նալ առաւօտուն, մինչև ոչ մնալոյ և
ոչ միոյ ուրուք որ ոչ անց ընդ Յորդա-
23 նան։ Եւ Աքիտոփէլ իբրև ետես եթէ
ոչ եղև խորհուրդն նորա, համետեաց
զէշ իւր և յարեաւ գնաց ի տուն իւր
ի քաղաքն, և հրաման ետ տան իւրում,
և խեղդ արկ և մեռաւ, և թաղեցաւ
ի գերեզմանի հօր իւրոյ։
24 Եւ Դաւիթ եհաս [9]ի Բանակս. և Ա-
բիսողոմ անց ընդ Յորդանան ինքն և
25 ամենայն Իսրայէլ ընդ նմա։ Եւ զԱմե-
սայի կացոյց Աբիսողոմ փոխանակ Յո-
վաբայ ի վերայ զօրուն. և Ամեսայի
որդի էր առն միում անուն էր Յոթոր
[10]Յեզրայելացի. նա եմուտ առ Աբիգեա
դուստր Յեսսեայ՝ քոյր Շարուհեայ մօր
26 Յովաբայ։ Եւ բանակեցաւ Աբիսողոմ և
ամենայն Իսրայէլ յերկրին Գաղաադու։
27 Եւ եղև իբրև եհաս Դաւիթ [9]ի Բա-
նակսն, Վեսբի որդի Նաասայ յՌաբա-
թայ որդւոցն Ամոնայ և Մաքիր որդի
Ամիելի ի Լադաբարայ, և Բերզելի Գա-
28 ղաադացի յՌոգելիմայ, Բերին անկողինս
[11]տասն, և [12]օթոցս և աման տասն", և
անօթս բրուտի, և ցորեան և գարի և
ալեւր և փոխինդ և ոլոռն և ոսպն[13]
29 Եւ մեղր և կոգի և պատրուճակս և
[14]որթս զինեցիկս", և մատուցին Դաւթի
և զօրուն որ ընդ նմա՝ ուտել. [15]զի էր
զօրն քաղցեալ" և ծարաւի և լքեալ
յանապատի անդ։

## ԳԼ. ԺԸ

1 Եւ համարս արար Դաւիթ զօրուն որ
ընդ նմա, և կացոյց ի վերայ նոցա հա-
2 զարապետս և հարիւրապետս։ Եւ ա-
ռաքեաց Դաւիթ զերիր մասն զօրուն ի
ձեռն Յովաբայ, և զերիր մասն ի ձեռն
Աբեսսայ որդւոյ Շարուհեայ՝ եղբօր Յո-
վաբայ, և զերիր մասն ի ձեռն Եթթեայ
Գեթացւոյ. և ասէ Դաւիթ ցզօրն, Ե-
3 լանելով ելից և ես ընդ ձեզ։ Եւ ասեն,
Ոչ ելցես. զի եթէ փախչիցեմք, ոչ դի-
ցեն ի վերայ մեր զսիրտ. և եթէ կիսոյ
կէս ի մէնջ մեռանիցիմք, ոչ դիցեն ի
վերայ մեր զսիրտ. զի դու իբրև զտասն
հազար ի մէնջ ես. և արդ լաւ է թէ
դու ի քաղաքի իցես, զի լինիցիս մեզ
4 յօգնականութիւն։ Եւ ասէ ցնոսա ար-
քայ, Որ ինչ հաճոյ իցէ առաջի ձեր ա-

---

[1]Եբր. զնա [2]Եբր. ետու խրատ [3]Եբր. ի դաշտս [4]Եբրայեցին յաւելու, շտապաւ [5]Եբր. ի գաւթին [6]Եբր. տարածեաց ծածկոյթ [7]Եբր. ցորեան ծեծեալ (ձաւար) [8]Եբրայեցին յաւելու, փութով

[9]Եբր. ի Մանայիմ [10]Եբր. Իսրայելացի [11]Յեբր. դակառէ [12]Եբր. կոնքս [13]Եբրայեցին յաւելու, և սիսեռն [14]Եբր. պանիր կովու [15]Եբր. զի ասացին. Քաղցեալ իցէ զօրն

բարից . եւ եկաց արքայ յեց առ դրանն ,
եւ ամենայն զօրն ելանէր ըստ հարիւ-
5 րաւորաց եւ ըստ հազարաւորաց ։ Եւ
պատուէր ետ արքայ Յովաբայ եւ Աբեսա-
այ եւ Եթթեայ եւ ասէ , Խնայեսջիք [1]ի
պատանեակն իմ՟ Աբիսողոմ . եւ ամե-
նայն զօրն լուաւ ի պատուիրելն արքայի
ամենայն իշխանացն վասն Աբիսողոմայ ։
6 Եւ ել [2]ամենայն զօրն յանտառն՟ ընդ-
դէմ Իսրայելի , եւ եղեւ կռիւ յանտա-
7 ռին Եփրեմայ ։ Եւ պարտեցաւ անդ զօրն
Իսրայելի առաջի ծառայիցն Դաւթի . եւ
եղեւ խորտակումն մեծ յաւուր յայնմիկ ,
8 եւ անկան քսան հազար արանց ։ Եւ ե-
ղեւ անդ պատերազմն ցրուեալ ընդ ա-
մենայն երեսս երկրին . եւ յաճախեաց
անտառն ուտել ի զօրուէն քան զոր ե-
կեր սուրն ի զօրուէն յաւուրն յայնմիկ ։
9 Եւ դիպեցաւ Աբիսողոմ առաջի ծառա-
յիցն Դաւթի . եւ Աբիսողոմ էր հեծեալ
ի ջորւոջ [3]իւրում , եւ եմուտ ջորին ընդ
թաւ կաղնեաւ մեծաւ , եւ պատեցաւ
գլուխ նորա ընդ կաղնեաւն , եւ կախե-
ցաւ ընդ երկինս եւ ընդ երկիր , եւ ջո-
10 րին անց ի ներքոյ նորա ։ Եւ ետես այր
մի եւ պատմեաց Յովաբայ եւ ասէ , Ա-
հա տեսի զԱբիսողոմ կախեալ զկաղնե-
11 ւոյն ։ Եւ ասէ Յովաբ ցայրն որ պատ-
մեաց նմա , Եւ ահա տեսեր եւ ընդէ՞ր
ոչ հարեր զնա ընդ գետին , եւ ես տայի
քեզ [4]այսօր յիսուն սիկղ արծաթոյ եւ
12 սուսեր՟ մի ։ Եւ ասէ այրն ցՅովաբ , Եւ
եթէ կշռով իսկ առնուի [5]ի ձեռաց քոց՟
հազար սիկղ արծաթոյ , ոչ ձգէի զձեռն
իմ յորդի արքայի . զի յականջս մեր պա-
տուիրեաց արքայ քեզ եւ Աբեսսայ եւ
Եթթեայ , եւ ասէ , Զգոյշ լինիջիք պա-
13 տանեկին Աբիսողոմայ , [6]Մի՞ ինչ վնաս
առնել անձին նորա՟ . եւ ամենայն բան
ոչ թաքչիցէ յարքայէ , եւ դու [7]կայցես
14 ի բացեայ ։ Եւ ասէ Յովաբ , Վասն այ-
դորիկ իսկ անցից առաջի քո՟ . եւ առ
Յովաբ երիս նետս ի ձեռին իւրում , եւ
եհար զնոսա ի սիրտ Աբիսողոմայ մինչ-
15 դեռ կենդանի կայր ի կաղնւոջն ։ Եւ պա-
տեցան տասն մանուկ ի զինակրացն Յո-
վաբայ , եւ հարին զԱբիսողոմ եւ սպա-
16 նին զնա ։ Եւ եհար Յովաբ զփողն [3]եղ-
ջերեաց , եւ դարձաւ զօրն [8]որ ընդ նմա ,
զի մի՛ երթիցեն զհետ Իսրայելի . զի
17 խնայեաց Յովաբ ի զօրն ։ Եւ առ Յո-
վաբ զԱբիսողոմ , եւ ընկեց՟ զնա ի վիհ
մեծ յանտառին, [9]ի խորբին յոյժ . եւ ամե-
նայն Իսրայէլ փախեաւ այր իւրաքան-
չիւր ի բնակութիւն իւր ։
18 Բայց Աբիսողոմ մինչդեռ կենդանի
էր կանգնեաց իւր արձան , [10]եւ կանգ-
նեաց ի Յարբին դարձանս ի հովիտս թա-
գաւորաց՟ . քանզի ասաց թէ չիք [11]իւր
որդի որ յիշեցէ զանուն [11]նորա . եւ կո-
չեաց զարձանն յիւր անուն, եւ [12]կոչեաց
զնա՟ ձեռն Աբիսողոմայ մինչեւ ցայսօր։
19 Եւ Աքիմաաս որդի Սադովկայ ասէ ,
Ընթացայց տարայց աւետիս արքայի ,
զի արար նմա Տէր իրաւունս ի ձեռաց
20 թշնամեաց իւրոց ։ Եւ ասէ ցնա Յովաբ ,
Ոչ ես դու այր աւետեաց յաւուր յայս-
միկ , եւ տացես աւետիս յայլում ա-
ւուր . բայց յաւուր յայսմիկ մի՛ տացես
աւետիս , քանզի որդի արքայի մեռաւ ։
21 Եւ [13]ասէ ցՔուսի , Երթ պատմեա ար-
քայի զոր ինչ տեսեր . եւ երկիր եպագ
22 Քուսի Յովաբայ եւ [14]ել ։ Եւ յաւել եւս
Աքիմաաս որդի Սադովկայ եւ ասէ ցՅո-
վաբ , Եւ զի՞նչ լինիցի եթէ ընթանայ-
ցեմ եւ ես զկնի Քուսեայ ։ Եւ ասէ Յո-
վաբ , Եւ ընդէ՞ր լիցէ քեզ այն եթէ ըն-
թանայցես , որդեակ իմ . [3]այսր եկ,՟ ոչ
ինչ են քեզ աւետիքն յօգուտ երթալոյ ։
23 Եւ ասէ Աքիմաաս , Զի՞ է եթէ ընթա-
նայցեմ . եւ ասէ ցնա Յովաբ , Ընթա ։
Եւ ընթացաւ Աքիմաաս ընդ ճանապարհն
24 [15]Կեքարայ եւ անց զՔուսիաւ ։ Եւ Դա-
ւիթ նստէր ի մէջ երկոցունց դրանցն .
եւ գնաց դէտն ի տանիս դրանն ի պա-
րիսպն , ամբարձ զաչս իւր եւ ետես , եւ
ահա այր ընթանայր միայն [3]հանդէպ իւր՟ ։
25 Եւ աղաղակեաց դէտն եւ ազդ արար
արքայի . եւ ասէ արքայ , Եթէ միայն
է , աւետիք են ի բերան նորա . եւ գա-
26 լով գայր եւ մերձենայր ։ Եւ ետես դէտն
միւս եւս այր ընթացեալ , եւ աղաղա-
կեաց դէտն ի դուռն եւ ասէ , Ահա միւս

[1]Եբր. ինձ ի պատանեակն [2]Եբր. զօրն ի ճակատ [3]ՅԵբր. գ—յ—ւ [4]Եբր. տասն սիկղ արծաթոյ եւ կամար [5]Եբր. ի ձեռս իմ [6]Եբր. Այլ թէ ոչ՝ արարեալ էր իմ նենգութիւն ընդդէմ անձին իմոյ [7]Եբր. կայիր հակառակ ինձ ։ (14) Եւ ասէ Յովաբ, Ոչ այդպէս ժամավաճառ եղէց առաջի քո

[8]Եբր. ի հալածելոյ զԻսրայէլ . զի արգել Յովաբ զզօրն ։ (17) Եւ առին զԱբիսողոմ եւ ընկեցին [9]Եբր. եւ կուտեցին ի վերայ նորա կարկառ քարանց մեծ [10]Եբր. ի հովտին արքունի [11]Եբր. իմ [12]Եբր. կոչեցաւ այն [13]Եբր. ասէ Յովաբ [14]Եբր. ընթացաւ [15]Եբր. դաշտին

եւս այր ընթանայ միայն ։ Եւ ասէ ար-
27 քայ, Եւ նա աւետաւոր է ։ Եւ ասէ դէտն,
Տեսանեմ զընթացս առաջնոյն իբրեւ
զընթացս Աքիմաասայ որդւոյ Սադովկայ։
Եւ ասէ արքայ, Այր բարի է նա, եւ
28 բարի աւետեօք գայ ։ Եւ աղաղակեաց
Աքիմաաս եւ ասէ ցարքայ, Ողջոյն է.
եւ երկիր եպագ ի վերայ երեսաց իւրոց
յերկիր եւ ասէ, Օրհնեալ է Տէր Աստուած
քո, որ փակեաց զարս [1]ատելիս քո՛՛ որ ամ-
բարձին զձեռս իւրեանց ի վերայ տեառն
29 մերոյ արքայի։ Եւ ասէ արքայ, եթէ Ող-
ջո՞յն իցէ մանկանն [1]իմոյ Աբիսողոմայ ։
Եւ ասէ Աքիմաաս, Տեսի խուռն մեծ [2]ու-
տի առաքեացն Յովաբ ծառայ քո, ար-
քայ,՛՛ զիս զծառայ քո, եւ ոչ գիտացի
30 թէ զինչ իցէ անդ ։ Եւ ասէ արքայ, դար-
ձիր եւ արձանացիր. եւ դարձաւ եւ ե-
31 կաց ։ Եւ ահա Քուսի եւ ասէ [1]ցարքայ,
Աւետի՛ք տեառն իմոյ արքայի. զի արար
քեզ Տէր իրաւունս այսօր ի ձեռաց ա-
32 մենայն յարուցելոց ի վերայ քո ։ Եւ ա-
սէ արքայ ցՔուսի, եթէ Ողջո՞յն իցէ
մանկանն [1]իմոյ Աբիսողոմայ ։ Եւ ասէ
Քուսի, Եղիցին իբրեւ զմանուկն թշնա-
միք տեառն իմոյ արքայի, եւ ամենայն
յարուցեալք ի վերայ քո ի չարութիւն ։
33 Եւ խռովեցաւ արքայ եւ ել ի վերնա-
տուն դրանն եւ ելաց. եւ այսպէս ասէր
[3]ի լալ իւրում, Որդեակ իմ Աբիսողոմ,՛՛
Աբիսողոմ որդեակ իմ, ո՛ տայր զմահ
իմ փոխանակ քո. [1]ես փոխանակ քո,՛՛
Աբիսողոմ որդեակ իմ, որդեակ իմ [1]Ա-
բիսողոմ ։

Գլ. ԺԹ

1 Եւ պատմեցաւ Յովաբայ եւ ասեն, Ա-
հաւասիկ արքայ լայ եւ ողբայ ի վերայ Ա-
2 բիսողոմայ ։ Եւ եղեւ փրկութիւնն յա-
ւուր յայնմիկ ի սուգ ամենայն զօրուն.
զի լուաւ զօրն յաւուր յայնմիկ, ասեն
թէ Տրտմեցաւ արքայ վասն որդւոյն իւ-
3 րոյ ։ Եւ խորշէր զօրն յաւուր յայնմիկ
մտանել ի քաղաքն, որպէս խորշիցի զօր
ամաչեցեալ յորժամ փախչիցի ի պատե-
4 րազմէ ։ Եւ արքայ ծածկեաց զերեսս
իւր, եւ կական բարձ ի ձայն մեծ եւ
ասէ, Որդեակ իմ Աբիսողոմ, Աբիսո-
ղոմ որդեակ իմ ։
5 Եւ եմուտ Յովաբ առ արքայ ի տուն եւ
ասէ, Յամօթ արարեր այսօր զերեսս ա-
մենայն ծառայից քոց, որ ապրեցուցին
զքեզ այսօր, եւ զանձինս ուստերաց եւ
դստերաց քոց, եւ զանձինս կանանց եւ
6 զհարճից քոց. Սիրել զատելիս քո եւ ա-
տել զսիրելիս քո. եւ ուսուցեր այսօր
եթէ ոչ ինչ համարիս զիշխանս քո եւ
ոչ զծառայս քո. եւ ստուգեալ գիտեմ
այսօր, զի եթէ Աբիսողոմ կենդանի էր,
մեք ամենեքեան մեռեալ էաք, եւ այն
7 էր քեզ հաճոյ ։ Եւ արդ յարուցեալ ել
եւ խօսեաց ի սիրտ ծառայից քոց. զի
ի Տէր երդուեալ, եթէ ոչ ելանիցես այ-
սօր, եթէ ագանիցի առ քեզ այր մի
զգիշերս զայս. եւ գիտասջիր յանձն քո,
թէ չար լինիցի քեզ այն քան զամենայն
չարիս որ եկին ի վերայ քո ի մանկու-
8 թենէ քումմէ մինչեւ ցայժմ ։ Եւ յարեաւ
արքայ եւ նստաւ ի դրանն. եւ ամե-
նայն զօրուն պատմեցին եւ ասեն, Ահա
արքայ նստի առ դրանն, եւ եմուտ ա-
մենայն զօրն առաջի արքայի. եւ Իս-
րայէլ փախեաւ այր իւրաքանչիւր ի
բնակութիւն իւր ։
9 Եւ ամենայն ժողովուրդն խզճէր յա-
մենայն ցեղսն Իսրայէլի. եւ ասէին, Արքայ
[1]Դաւիթ փրկեաց զմեզ յամենայն թշնամ-
եաց մերոց, եւ նա ապրեցոյց զմեզ ի
ձեռաց այլազգեաց. եւ արդ փախստական
է յերկրէս եւ ի թագաւորութենէ իւրմէ
10 յԱբիսողոմայ. Եւ Աբիսողոմ զոր օծաք
մեզ՝ մեռաւ ի պատերազմի. եւ արդ դուք
զի՞ լռեալ կայք ի դարձուցանելոյ զարքայ։
11 [1]Եւ պատգամ ամենայն Իսրայէլի եկն
առ արքայ.՛՛ եւ արքայ Դաւիթ առաք-
եաց առ Սադովկ եւ Աբիաթար քահա-
նայս եւ ասէ, Խօսեցարուք ընդ ծերս
Յուդայ եւ ասացէք. Ընդէ՞ր լինիք յե-
տինք դարձուցանել զարքայ ի տուն իւր.
եւ պատգամ ամենայն Իսրայէլի եկն
12 առ [5]արքայ ։ Եւ ասէ Դաւիթ ցցեղն
Յուդայ՛՛, Եղբարք իմ եւ մարմինք իմ
դուք՝ ընդէ՞ր լինիք յետինք դարձուցա-
13 նել զարքայ ի տուն իւր ։ Եւ ցԱմեսայի
ասասջիք, Ո՞չ ոսկր իմ եւ մարմին իմ
ես դու. եւ արդ օն եւ օն արասցէ ինձ
Աստուած եւ օն եւ օն յաւելցէ, եթէ
ոչ իշխան զօրուն լինիցիս առաջի իմ
զամենայն աւուրս փոխանակ Յովաբայ։
14 Եւ դարձոյց զսիրտ ամենայն Յուդայ
իբրեւ զառն միոյ, եւ առաքեցին առ

[1] Յօրին. պակասէ [2] Օրին. յառաքելն Յովաբայ զծառայն արքայի, եւ [3] Օրին. ի գնալ [4] Օրինակեցին յաւելու, որդեակ իմ

[5] Օրին. արքայ, ի տուն նորա (12) Եղբարք իմ դուք

արքայ եւ ասեն, Դարձիր դու եւ ամե-
15 նայն ծառայք քո։ Եւ դարձաւ արքայ
եւ եկն մինչեւ ցՅորդանան. եւ արք
Յուդայ եկին ի Գաղգաղա՝ երթալ ընդ
առաջ արքային, եւ անցուցանել զար-
քայ ընդ Յորդանան։
16 Եւ աճապարեաց Սեմէի որդի Գերեայ
որդւոյ Յեմինայ ի Բաւուրիմայ, եւ էջ
ընդ առն Յուդայ ընդ առաջ արքայի
17 Դաւթի, Եւ հազար այր ընդ նմա ի Բե-
նիամենէ, եւ Սիբա պատանի տանն Սա-
ւուղայ, եւ հնգետասանեքին որդիք նո-
րա ընդ նմա, եւ քսանեքին ծառայք
նորա ընդ նմա, եւ [1]կազմեցին զՅոր-
18 դանան առաջի արքային։ Եւ [2]հարին սպա-
սաւորութիւն անցուցանելոյ զարքայ. եւ
անցին անցուորք զարթուցանել" զտունն
արքային, եւ առնել [3]զողորմութիւն ա-
ռաջի աչաց նորա. եւ Սեմէի որդի Գեր-
եայ անկաւ ի վերայ երեսաց իւրոց ա-
ռաջի արքային՝ մինչ անցանէր ընդ Յոր-
19 դանան, Եւ ասէ ցարքայ, Մի՛ համա-
րեսցի տէր իմ արքայ անօրէնութիւն,
եւ մի՛ յիշեսցէ զոր ինչ յանցեաւ ծա-
ռայ քո յաւուր յորում ելանէր տէր իմ
յԵրուսաղեմէ, դնել արքային ի սրտի իւ-
20 րում. Զի գիտաց ծառայ քո թէ մեղայ.
եւ ահաւասիկ ես եկի այսօր յառաջա-
գոյն քան զամենայն տունն Յովսեփայ,
իջանել ընդ առաջ տեառն իմոյ արքային։
21 Եւ պատասխանի ետ Աբեսսա որդի Շա-
րուհեայ եւ ասէ, Միթէ փոխանակ այ-
նորիկ ո՞չ մեռանիցի Սեմէի, զի անէծ
22 զօծեալ Տեառն։ Եւ ասէ Դաւիթ, Զի՞
կայ իմ եւ ձեր, որդիք Շարուհեայ, զի
լինիք դուք ինձ այսօր ի դաւաճանու-
թիւն. [4]մի՛ ոք մեռցի" այսօր այր յԻսրա-
յելէ. միթէ ո՞չ գիտիցեմ ես, զի այսօր
23 թագաւորեմ ես ի վերայ Իսրայելի։ Եւ
ասէ արքայ ցՍեմէի, Ոչ մեռցիս. եւ
երդուաւ նմա արքայ։
24 Եւ Մեմփիբոսթէ որդի [5]Յովնաթանու
որդւոյ" Սաւուղայ էջ ընդ առաջ ար-
քային. եւ ոչ էր դարմանեալ զոտս իւր,
[5]եւ ոչ էր հատեալ զեղունգունս իւր," եւ
ոչ էր փաքրեալ զմօրուս իւր, [5]եւ ոչ էր
արարեալ զընչօք իւրովք," եւ ոչ էր
լուացեալ զհանդերձս իւր, յօրէ յորմէ
հետէ գնաց արքայ մինչեւ ցօրն յորում
25 եկն նա խաղաղութեամբ։ Եւ եղեւ իբ-
րեւ եմուտ յԵրուսաղէմ, ել ընդ առաջ
արքային. եւ ասէ ցնա արքայ, Զի՞ է
զի ոչ գնացեր ընդ իս, Մեմփիբոսթէ։
26 Եւ ասէ ցնա Մեմփիբոսթէ, Տէր իմ
արքայ, ծառայ իմ [6]արհամարհեաց զիս,
զի ասաց ծառայ քո [7]ցնա թէ Կազմեա"
ինձ էշ եւ հեծայց ի նա եւ գնացից ընդ
27 արքային. զի կաղ է ծառայ քո։ Եւ
[8]զայրացոյց ընդ իս ծառայ քո զքեզ տէր
իմ արքայ. եւ տէր իմ արքայ արար
զքարին իւր առաջի իւր" իբրեւ զհրեշ-
տակ Աստուծոյ. եւ արդ արա որ ինչ
28 բարի է յաչս քո։ Զի ոչ էր ամենայն
տունն հօր իմոյ եթէ ոչ արք մահու
տեառն իմոյ արքային, եւ կարգեցեր
զծառայ քո ընդ այնոսիկ որ ուտեն զսե-
ղան արքային. եւ արդ զի՞նչ իրաւունք
կան իմ այսուհետեւ բողոք ունել միւս-
29 անգամ առ արքայ։ Եւ ասէ ցնա ար-
քայ, Զի՞ եւս խօսիս զբանս քո. ասացի
թէ դու եւ Սիբա բաժանեցէք զագա-
30 րակն։ Եւ ասէ Մեմփիբոսթէ ցարքայ,
Զամենայն իսկ առցէ, որովհետեւ եկն
[9]արքայ խաղաղութեամբ ի տուն իւր։
31 Եւ Բերզելի Գաղաադացի էջ յՌոգե-
լիմայ, եւ [10]անցոյց զարքայ" ընդ Յոր-
դանան, յուղարկել զնա ի Յորդանանէ։
32 Եւ Բերզելի այր ծեր էր յոյժ, որդի ա-
մաց ութսնից. եւ նա կերակրեաց զար-
քայ մինչ բնակէր [11]ի Բանաիս, զի այր
33 մեծ էր յոյժ։ Եւ ասէ արքայ ցԲերզելի,
Դու անցցես ընդ իս եւ կերակրեցից
[12]զծերութիւն քո" ընդ իս յԵրուսաղէմ։
34 Եւ ասէ Բերզելի ցարքայ, Քանի՞ ինչ
իցեն աւուրք կենաց իմոց, զի ելանիցեմ
35 ընդ արքային յԵրուսաղէմ. Որդի ամաց
ութսնից եմ ես այսօր. միթէ գիտիցե՞մ
ինչ ի մէջ բարւոյ եւ չարի, կամ թէ
իմանայցէ՞ ծառայ քո զոր ուտեմ կամ
զոր ըմպեմ, կամ թէ լսիցե՞մ տակաւին
զձայն գուսանաց եւ վարձակաց. եւ
ընդէ՞ր լինիցի ծառայ քո բեռն տեառն
36 իմոյ արքային։ Սակաւ ինչ [13]անց ծա-
ռայ քո ընդ Յորդանան ընդ արքային,
եւ ընդէ՞ր հատուցանիցես ինձ, արքայ,
37 զհատուցումն զայդ. [14]Նստցի ծառայ
քո եւ մեռցի ի քաղաքի իւրում, եւ ի

[1] Եբր. անցին  [2] Եբր. անց նաւակ անցուցանել  [3] Եբր. զքարին  [4] Եբր. մեռցի՞  [5] Յեբր. պակաս

[6] Եբր. խաբեաց  [7] Եբր. Կազմեցից  [8] Եբր. չարախօս եղեւ զծառայէ քումմէ առ տէր իմ արքայ, եւ տէր իմ արքայ է  [9] Եբր. տէր իմ արքայ  [10] Եբր. անց ընդ արքային  [11] Եբր. ի Մանայիմ  [12] Եբր. զքեզ  [13] Եբր. անցցէ  [14] Եբր. Դարձցի

գերեզմանի հօր եւ մօր իւրոյ. եւ ահա
ծառայ քո Քամաամ անցցէ ընդ Տեառն
իմում արքայի, եւ արա նմա որ ինչ
38 բարի թուի առաջի աչաց քոց: Եւ ասէ
արքայ, Անցցէ ընդ իս Քամաամ, եւ ես
արարից նմա որ ինչ բարի իցէ առաջի
աչաց [1]իմոց. եւ զամենայն որ ինչ ակն
39 ունիցիս յինէն՝ արարից քեզ: Եւ անց
ամենայն ժողովուրդն ընդ Յորդանան,
անց եւ արքայ: Եւ համբուրեաց արքայ
զԲերզելի, եւ օրհնեաց զնա, եւ դար-
40 ձաւ ի տեղի իւր: Եւ անց արքայ ի
Գաղգաղա, անց եւ Քամաամ ընդ նմա.
եւ ամենայն ժողովուրդն Յուդայ [2]անցին
ընդ արքայի", եւ կէս ժողովրդեանն
Իսրայելի:
41 Եւ ահա ամենայն այր Իսրայելի եկին
առ արքայ եւ ասեն ցնա, Զի՞ է զի գո-
ղացան զքեզ եղբարք մեր այր Յուդայ,
եւ անցուցին զարքայ եւ զտուն իւր ընդ
42 Յորդանան[3]: Եւ պատասխանի ետ այր
Յուդայ առն Իսրայելի եւ ասէ, Քանզի
մերձաւոր խակ է իմ արքայ. եւ ընդէ՞ր
զժկամակ եղեր վասն բանիս այսորիկ.
միթէ ուտելով կերա՞ք ինչ յարքայէ,
կամ թէ պարգեւ ետ մեզ, [4]կամ թէ
43 զբե՞ռն ինչ եբարձ զմերը" Պատասխանի
ետ այր Իսրայելացի առն Յուդայ եւ
ասէ, Տասն ձեռք իմ են յարքայի, [4]եւ
անդրանիկ ես եմ քան զքեզ." Նա եւ
ի Դաւթի՝ ես ի վեր եմ քան զքեզ. եւ
ընդէ՞ր այդպէս թշնամանեցեր զիս, եւ
ոչ եղեւ ի համարի բան իմ, նախ ինձ
դարձուցանել զարքայ առ իս. եւ խստա-
ցաւ բան առն Յուդայ քան զբան առն
Իսրայելի:

ԳԼ. Ի

1 Եւ անդ խրախուսեաց այր անօրէն, եւ
անուն նորա Սաբեէ որդի Բոքորեայ այր
Յեմինացի, փող եհար եղջերեաւ եւ ա-
սէ, Զիք մեր մասն ի Դաւիթ, եւ ոչ
ժառանգութիւն յորդին Յեսսեայ. չուեա
այր իւրաքանչիւր ի բնակութիւնս քո,
2 Իսրայէլ: Եւ ել ամենայն Իսրայէլ ի Դաւ-
թէ զկնի Սաբէեայ որդւոյ Բոքորեայ, եւ
այր Յուդայ չոգան զհետ թագաւորին իւր-
եանց ի Յորդանանէ մինչեւ յԵրուսաղէմ:
3 Եւ եմուտ Դաւիթ ի տուն իւր յԵրու-
սաղէմ. եւ առ արքայ զտասն կանայսն
զհարճս իւր զորս եթող պահել զտունն,
եւ ետ զնոսա ի տուն պահեստի. եւ կե-
րակրեաց զնոսա, եւ առ նոսա ոչ ե-
մուտ. եւ էին նեղեալք, մի մինչեւ ցօր
մահուան իւրեանց կեցին այրիք:
4 Եւ ասէ Դաւիթ ցԱմեսայի, Զայնեա
առ իս զամենայն այր Յուդայ զերիս ա-
5 ւուրս, եւ դու այսր եկեսցես: Եւ գնաց
Ամեսայի ձայնել զՅուդա, եւ յամեաց ի
6 ժամանակէն զոր եդ նմա: Եւ ասէ Դա-
ւիթ ցԱբեսսա, Արդ առնէ մեզ չար
Սաբեէ որդի Բոքորեայ [5]վասն Աբիսո-
ղոմայ". արդ ա՛ռ դու ընդ քեզ զծառայս
տեառն քո, եւ պնդեաց զհետ նորա.
գուցէ գտանիցէ իւր քաղաքս ամուրս,
եւ [6]ածիցէ ստուերածս ի վերայ աչաց"
7 մերոց: Եւ ելին զհետ նորա [4]Աբեսսա
եւ" արք Յովաբայ, եւ Քերեթին եւ Ո-
փելեթին եւ ամենայն զօրաւորք, եւ
ելին յԵրուսաղեմէ պնդել զհետ Սաբէ-
եայ որդւոյ Բոքորեայ:
8 Եւ մինչդեռ էին նոքա առ վիմին մեծի
որ ի Գաբաւոն, եւ Ամեսայի եմուտ ա-
ռաջի նոցա. եւ Յովաբ զգեցեալ էր վա-
րապանակս զըահից, եւ ի վերայ նորա
սուսեր ընդ մէջ՝ ծպնեալ առ միջովն պա-
տենիւք համդերձ, եւ այն էր թերաքա-
9 մեալ[7]: Եւ ասէ Յովաբ ցԱմեսայի, Եթէ
ո՞ղջ իցես, եղբայր. եւ կալաւ Յովաբ
աջով ձեռամբն զմօրուացն Ամեսայայ
10 համբուրել զնա: Եւ Ամեսայի ոչ զգու-
շացաւ ի սրոյն որ էր ի ձեռին Յովաբայ.
եւ եհար զնա նովաւ Յովաբ ընդ մնա-
կունսն, եւ վայթեցաւ որովայն նորա
յերկիր, եւ ոչ կրկնեաց նմա. եւ մե-
ռաւ Ամեսայի: Եւ Յովաբ եւ Աբեսսա
եղբայր իւր պնդեցան զհետ Սաբէեայ
11 որդւոյ Բոքորեայ: Եւ այր ոմն եկն ե-
կաց ի վերայ Ամեսայայ յերիտասարդացն
Յովաբայ եւ ասէ, Որ ոք սիրիցէ զՅո-
վաբ կամ զԴաւիթ, երթիցէ զհետ Յո-
12 վաբայ [4]եւ Աբեսսայ": Եւ Ամեսայի կայր
թաթաւեալ յարեանն ի մէջ ճանապար-
հին. եւ տեսեալ առնն եթէ զտեղի ա-
ռեալ կայ ամենայն զօրն, տապալեաց
զԱմեսայի ի ճանապարհէն յանդն, եւ
ընկէց ի վերայ նորա համդերձ. քանզի
տեսանէր զամենայն ոք եկեալ կացեալ
13 ի վերայ նորա: Եւ իբրեւ փոխեցաւ ի

[1] Եբր. քոց  [2] Եբր. անցուցին զարքայ  [3] Եբրայե-ցին յաւելու, եւ զամենայն արս Դաւթի ընդ նմա  [4] Յեբր. պակասի

[5] Եբր. քան զԱբիսողոմ  [6] Եբր. խուսափեսցէ յաչաց  [7] Եբրայեցին յաւելու, եւ անկաւ

ճանապարհէն, անցանէր ամենայն այր
[1]Իսրայէլի զհետ Յովաբայ պնդել զհետ
14 Սաբէեայ որդւոյ Բոքորեայ։ (Եւ անց ընդ
ամենայն ցեղսն Իսրայէլի յԱբէլ եւ ի
Բեթմաքա, եւ ամենայն ընտիր ընտիրքն
15 ժողովեցան եւ եկին զհետ նորա։) Եւ
հասին եւ պատեցին [2]ի վերայ նորա զԱ-
բէլ եւ զԲեթմաքա". եւ կուտեցին բլուր
հողոյ հանդէպ քաղաքին, եւ կանգնե-
ցաւ իբրեւ զպատուար. եւ ամենայն
զօրն որ ընդ Յովաբայ՝ եղծանէր կոր-
ծանէր զպարիսպն։
16 Եւ աղաղակեաց կին մի իմաստուն [3]ի
պարսպէն եւ ասէ, Լուարուք, լուա-
րուք. ասացէք ցՅովաբ, Մատիր այսր
17 եւ խօսեցայց ընդ քեզ։ Եւ մատեաւ առ
նա. եւ ասէ կինն, եթէ Դո՞ւ իցես Յո-
վաբ։ Եւ ասէ, Ես եմ։ Եւ ասէ գնա,
Լուր բանից աղախնոյ քո։ Եւ ասէ Յո-
18 վաբ, Ի լսել եկեալ եմ ես։ Եւ խօսե-
ցաւ եւ ասէ, Բան ճառէր յառաջինս եւ
ասէին, Հարցանելով [4]հարցաւ յԱբէլ եւ
ի Դան. եթէ պակասեցուցի՞ն, եթէ ա-
պատակեցի՞ն հաւատարիմք Իսրայէլի.
հարցանելով հարցցեն յԱբէլ, եւ ապա
19 թէ պակասեցուցանիցեն։ Ես եմ խա-
ղաղարար հաւատարմութեան Իսրայէլի,
եւ դու խնդրես կոտորել զքաղաքս Իս-
րայէլի". ընդէ՞ր ընկղմես զժառանգու-
20 թիւն Տեառն։ Պատասխանի ետ Յովաբ
եւ ասէ, Քաւ լիցի ինձ, քաւ լիցի ե-
21 թէ ընկղմեցից եւ ապականեցից. Ոչ
այդպէս է բանդ. զի այր մի ի լեռնէ
Եփրեմի, Սաբէէ անուն նորա՝ որդի Բո-
քորեայ, համբարձ զձեռն իւր ի վերայ
արքայի Դաւթի. տուք ինձ զնա միայն,
եւ գնացից ի քաղաքէ աստի։ Եւ ասէ
կինն ցՅովաբ, Ահա գլուխ նորա ընկեսցի
22 առ քեզ ընդ պարիսպս։ Եւ եմուտ կինն
առ ամենայն ժողովուրդն. [5]եւ խօսեցաւ
ընդ ամենայն քաղաքին իմաստութեամբ
իւրով՝ հատանել զգլուխն Սաբէեայ որդ-
ւոյ Բոքորեայ. եւ հատին" ընկեցին զնա
առ Յովաբ. եւ փող եհար եղջերեաւն, եւ
սփռեցան ի քաղաքէն յայնմանէ այր իւ-
րաքանչիւր ի բնակութիւնս իւրեանց. եւ

[1]Յեբր. [illegible] [2]Եբր. զնա յԱբէլ Բեթմաաքայ
[3]Եբր. ի քաղաքէն [4]Եբր. հարցցեն յԱբէլ և այն-պէս կատարեսցեն։ (19)Ես եմ խաղաղարար հա-ւատարմաց Իսրայէլի. եւ դու խնդրես սատա-կել զքաղաք, որ է մայր յԻսրայէլի [5]Եբր. իմաստութեամբ իւրով, եւ հատին զգլուխն Սաբէեայ որդւոյ Բոքորեայ եւ

Յովաբ դարձաւ յԵրուսաղէմ առ արքայ։
23 Եւ Յովաբ էր ի վերայ ամենայն զօ-
րուն Իսրայէլի. եւ Բանեա որդի Յովի-
դայեայ՝ ի վերայ Քերեթայն եւ Ոփելե-
24 թայն. Եւ Ադոնիրամ ի վերայ հարկաց.
եւ Յովսափատ որդի Աքիլուդթայ՝ յիշա-
25 տակաց. Եւ Սուդաէ՝ դպրապետ. եւ
26 Սադովկ եւ Աբիաթար՝ քահանայք. Եւ
Իրաս [6]որ Յարիմն՝ էր քահանայ" Դաւթի։

## Գլ. ԻԱ

1 Եւ եղեւ սով յաւուրս Դաւթի զերիս
ամս՝ ամ զամի զկնի, եւ խնդրեաց Դա-
ւիթ յերեսաց Տեառն. եւ ասէ Տէր,
Վասն Սաւուղայ եւ վասն արեանց տան
նորա է [1]վնասդ այդ, զի կոտորեաց զԳա-
2 բաւոնացիսն։ Եւ կոչեաց արքայ Դա-
ւիթ զԳաբաւոնացիսն, եւ ասէ ցնոսա.
եւ Գաբաւոնացիքն չեն [7]որդիք Իսրա-
յէլի, այլ յարենէ Ամորհացւոյն", եւ
որդիքն Իսրայէլի երդուան նոցա. եւ
խնդրեաց Սաւուղ հարկանել զնոսա,
նախանձ առեալ վասն որդւոցն Իսրա-
3 յէլի եւ Յուդայ։ Եւ ասէ Դաւիթ ցԳա-
բաւոնացիսն, Զի՞նչ արարից ձեզ եւ բ՞ւ
քաւեցից, եւ օրհնիցէք զժառանգութիւն
4 Տեառն։ Եւ ասեն ցնա Գաբաւոնացիքն,
Ոչ գոյ մեր արծաթ եւ ոսկի առ Սա-
ւուղայ եւ ի տան նորա, եւ ոչ պիտի
մեզ այր սպանանել յԻսրայէլէ։ Եւ նա
ասէ, Եւ արդ զի՞նչ ասէք զի արարից
5 ձեզ։ Եւ ասեն ցարքայ, Այր որ սպա-
ռեաց զմեզ եւ [8]հալածեաց զմեզ, որ
համարեցաւ սատակել զմեզ, զնա ապա-
կանեսցուք. զի մի՛ կացցէ" յամենայն
6 սահմանս Իսրայէլի, Տացին մեզ եւթն
արք յորդւոց նորա, եւ յարագեսցուք
զնոսա Տեառն ի Գաբաա Սաւուղայ [9]ըն-
տիրս Տեառն։ Եւ ասէ արքայ, Ես տաց
7 ձեզ։ Եւ խնայեաց արքայ ի Մեմփիբոս-
թէ որդի Յովնաթանու որդւոյ Սաւու-
ղայ վասն երդմանն Տեառն որ ի մէջ
Յովնաթանու որդւոյ Սաւուղայ եւ ի մէջ
8 Դաւթի։ Եւ առ արքայ զերկուս որդիսն
Ռեսփայ դստեր Այիայ զորս ծնաւ Սա-
ւուղայ, զԵրմոնիթի եւ զՅերուսթէ, եւ
զհնգեսին որդիսն Մերոբայ դստեր Սա-
ւուղայ, զորս ծնաւ Եզրիելի որդւոյ
9 Բերզելեայ Մովլաթացւոյ, Եւ ետ զնո-

[6]Եբր. Յայիրացի էր քահանայ, կամ, Նախարար
[7]Եբր. յորդւոցն Իսրայէլի, այլ ի մնացորդաց Ա-մորհացւոց [8]Եբր. հնարեցաւ հակառակ մեզ զի եղիցուք բնաջինջք [9]Եբր. ընտրոյ

սա ի ձեռս Գաբաւոնացւոցն . եւ յարա-
գեցին զնոսա ի լերինն առաջի Տեառն .
եւ անդ անկան եւթանեքին նոքա ի միա-
սին . եւ մեռան նոքա յաւուրս հնձոց ,
յառաջաւոր՝ ի սկզբան հնձոց գարեաց ։
10 Եւ առ Ռեսփա դուստր Այիայ քուրձ
եւ [1]արկ ի վերայ նոցա՝՝ ի վիմին ի սկզբան
հնձոց [2]գարեաց , մինչեւ կաթեաց ի վե-
րայ նոցա ջուր յերկնից . եւ ոչ ետուր
թողլ թռչնոց երկնից հանգչել ի վերայ
նոցա ի տուէ , եւ ոչ գազանաց անա-
11 պատի ի գիշերի ։ Եւ պատմեցաւ Դաւ-
թի զոր ինչ արար Ռեսփա դուստր Ա-
յիայ՝ հարճ Սաւուղայ , [2]եւ լքան . եւ
եհաս ի վերայ նոցա Դան որդի Յովա-
12 սայ՝ ի ծննդոց սկայից՝՝ Եւ չոգաւ Դաւ-
ւիթ եւ առ զոսկերսն Սաւուղայ եւ զոս-
կերսն Յովնաթանու որդւոյ նորա յա-
րանց Յաբիսայ Գաղաադու , որ գողա-
ցան զնոսա ի հրապարակացն Բեթսա-
նայ . զի արձանացուցին զնոսա անդ այլ-
ազգիքն յաւուր յորում հարին զնոսա
13 այլազգիքն ի Գեղբուէ . Եւ եհան անտի
զոսկերսն Սաւուղայ եւ զոսկերսն Յով-
14 նաթանու որդւոյ նորա . [3]Ժողովեաց եւ
զյարագելոցն յերկրին Բենիամենի, ի գե-
րեզմանն որ է մերձ առ Կիս հայր նո-
րա , եւ անդ թաղեցան՝՝. եւ արարին
զամենայն ինչ զոր հրամայեաց արքայ ,
եւ լուաւ Աստուած երկրին յետ այնորիկ ։
15 Եւ եղեւ միւսանգամ պատերազմ այլ-
ազգեացն ընդ Իսրայելի , եւ էջ Դա-
ւիթ եւ ծառայք նորա ընդ նմա , եւ պա-
տերազմեցան ընդ այլազգիսն . եւ լքաւ
16 Դաւիթ ։ Եւ [4]Աբեսսա ի Յեսբէ՝՝, որ էր
ի ծննդոցն Ռափայ , եւ կշիռ նիզակի
նորա յերեքհարիւր սիկղէ կշռոյ պղնձոյ ,
եւ ինքն ունէր ընդ մէջ իւր թուր , եւ
17 խորհէր հարկանել զԴաւիթ ։ Եւ օգնեաց
Դաւթի Աբեսսա որդի Շարուհեայ, եւ ե-
հար զայլազգին եւ սպան զնա . յայնժամ
երդուան արք Դաւթի եւ ասեն , եթէ Ոչ
եւս ելցես ընդ մեզ ի պատերազմ , եւ
ոչ շիջուսցես զճրագդ Իսրայելի ։
18 Եւ եղեւ յետ այնորիկ, եղեւ միւսան-
գամ պատերազմ [5]ի Գէթ ընդ այլազ-
գիսն . յայնժամ եհար Սոմբաք Ոսաթացի
զՍեփտան ի ծննդոցն Ռափայ ։
19 Եւ եղեւ միւսանգամ պատերազմ
[5]յՌոմբ ընդ այլազգիսն. եւ եհար Եղէա-
նան որդի Արիովրիմայ Բեթղեհեմացւոյ
զԳողիաթ Գեթացի , եւ փայտ նիզակի
նորա իբրեւ ոտոյր ոստայնանկաց ։
20 Եւ եղեւ միւսանգամ պատերազմ ի
Գէթ . եւ էր անդ այր մի [6]Մադոն , եւ
մատունք ձեռաց նորա եւ ոտից վեց վեց
քսան եւ չորք թուով . եւ նա ծնաւ Ռա-
21 փայ ։ Եւ նախատէր զԻսրայէլ . եւ ե-
հար զնա Յովնաթան որդի Սամայ եղ-
22 բօր Դաւթի ։ Զորեքին սոքա ծնան Ռա-
փայ [2]ի տան ի Գէթ . եւ անկան ի ձեռս
Դաւթի եւ ի ձեռս ծառայից նորա ։

## ԳԼ. ԻԲ

1 Եւ խօսեցաւ Դաւիթ Տեառն զբանս
օրհնութեանս այսորիկ յաւուր յորում
փրկեաց զնա Տէր ի ձեռաց ամենայն
թշնամեաց իւրոց եւ ի ձեռաց Սաւու-
2 ղայ , Եւ ասէ , Տէր վէմ իմ , եւ ամրու-
3 թիւն իմ , եւ փրկիչ իմ ինձ . Աստուած
[7]պահապան եղիցի ինձ՝՝, յուսացեալ եղէց
ի նա . [8]վերակացու իմ եւ եղջեւր
փրկութեան իմոյ , [9]ապաշտպան իմ եւ ա-
պաւէն փրկութեան իմոյ . յանիրաւէ
4 փրկեսցես զիս , Տէր ։ Զօրհնեալն զՏէր
կարդացից , եւ ի թշնամեաց իմոց ապրե-
5 ցայց ։ Զի պաշարեցին զիս ջախջախանք
մահու , ուղխք անօրէնութեան տագնա-
6 պեցուցին զիս ։ [10]Երկունք մահու՝՝ պա-
տեցան զինեւ , ժամանեցին ինձ որո-
7 գայթք մահու ։ Ի նեղութեան իմում
կարդացի առ Տէր , եւ առ Աստուած իմ
աղաղակեցի, եւ [11]լուիցէ ի տաճարէ սրբոյ՝՝
իւրմէ ձայնի իմում , եւ աղաղակ իմ
8 յականջս նորա ։ [12]Հայեցաւ եւ՝՝ խռովե-
ցաւ եւ շարժեցաւ երկիր , եւ հիմունք
երկնից խռովեցան եւ տապալեցան. զի
9 բարկացաւ նոցա Տէր ։ Ել ծուխ ի բար-
կութենէ նորա , եւ հուր ի բերանոյ նո-
րա կերիցէ . կայծակունք բոցոքեցան
10 ի նմանէ ։ Եւ խոնարհեցոյց զերկինս եւ
11 էջ , եւ մէգ ի ներքոյ ոտից նորա ։ Ել եւ
նստաւ ի վերայ քերովբէից եւ թռեաւ,
եւ երեւեցաւ ի վերայ թեւոց հողմոց ։
12 Եւ եդ զխաւարն ծածկութիւն իւր ,

[1]Եբր. արկ իւր [2]Յեբր. գ–ի––ն [3]Եբր. եւ ժողովեցին զոսկերս յարագելոցն ։ (14) Եւ թաղեցին զոսկերս Սաւուղայ եւ Յովնաթանու որդւոյ նորա յերկրին Բենիամինի ի Սեղա, ի գերեզմանի Կիսեայ հօր նորա [4]Եբր. Յեսբի Բենոբ [5]Եբր. ի Գոմբ

[6]Եբր. բարձր հասակաւ [7]Եբր. պարիսպ իմ [8]Եբր. վահան [9]Եբր. բարձրութիւն [10]Եբր. Տօռունք գժոխոց [11]Եբր. լուաւ ի տաճարէ [12]Եբր. Յայնժամ

չուրջ զնովաւ խորան իւր. եւ խաւար
13 ջրոց թանձրացոյց զամպս օդոց։ Ի լու-
սոյն առաջի նորա բորբոքեցան կայծա-
14 կունք հրոյ։ Եւ որոտաց յերկնից Տէր,
15 եւ Բարձրեալն ետ զձայն իւր։ Եւ ա-
ռաքեաց զնետս իւր եւ ցրուեաց զնոսա,
փայլատակեցոյց զփայլատակունս եւ
16 զարհուրեցոյց զնոսա։ Եւ երեւեցան
յորդութիւնք ծովու, եւ յայտնեցան հի-
մունք տիեզերաց ի սաստէ Տեառն եւ
ի շնչելոյ հողմոյ բարկութեան նորա։
17 Առաքեաց ի բարձանց եւ առ զիս, ձգեաց
18 զիս ի ջրոց բազմաց։ Կորզեաց զիս ի
բռնութենէ թշնամեաց իմոց եւ յատել-
եաց իմոց, զի սաստկացան քան զիս։
19 Ժամանեցին ինձ [1]աւուրք նեղութեան
իմոյ, եւ եղեւ ինձ Տէր հաստատու-
20 թիւն. Եւ եհան զիս յանդորր եւ ապրե-
21 ցոյց զիս, զի հաճեցաւ ընդ իս։ Եւ
հատոյց ինձ Տէր ըստ արդարութեան ի-
մում, եւ ըստ սրբութեան ձեռաց իմոց
22 հատուսցէ ինձ Տէր։ Զի պահեցի զճա-
նապարհս Տեառն, եւ ոչ ամպարշտեցայ
23 յԱստուծոյ իմմէ։ Զի ամենայն իրաւունք
նորա առաջի իմ են, եւ յարդարու-
24 թեանց նորա ոչ հեռացայ։ Եւ եղէց նմա
ամբիծ, եւ յառաջագոյն զգուշացայց
25 յանօրէնութենէ իմմէ։ Եւ հատուսցէ ինձ
Տէր ըստ արդարութեան իմում, եւ ըստ
սրբութեան ձեռաց իմոց առաջի աչաց
26 նորա։ Ընդ [2]սրբոյն սուրբ" եղիցես, եւ
27 ընդ առն կատարելոյ կատարեսցիս. Եւ
ընդ ընտրելոյն ընտրեալ եղիցես, եւ ընդ
28 թիւրելոյն թիւրեսցիս։ Զի դու զժողո-
վուրդ տնանկ փրկեսցես, եւ [3]զաչս ամ-
29 բարտաւանից խոնարհեցուսցես". Զի դու
ես ճրագ իմ, Տէր, եւ դու, Տէր, լուսա-
30 ւորեսցես ինձ զխաւար իմ։ Զի քեւ
ընթացայց [4]մենավինեալ, եւ Աստուծով
31 իմով անցից ընդ պարիսպ։ Աստուած
[5]իմ հզօր", որոյ անարատ է ճանապարհ
իւր. բան Տեառն [5]հզօր քննեալ, [6]վերա-
կացու է ամենայն ապաւինելոց իւրոց։
32 Ո՞վ է հզօր՝ բաց ի քէն, Տէր, եւ ո՞վ է
33 [7]հաստիչ բաց յԱստուծոյ մերմէ։ [8]Հզօր՝
որ զօրացուցանէ զիս զօրութեամբ.
34 ձգեաց անարատ" զճանապարհս իմ, Դնել
զոտս իմ իբրեւ զեղջերուաց. եւ ի վե-
35 րայ բարձանց կացուցանէ զիս։ Ուսու-
ցանէ զձեռս իմ ի պատերազմ, եւ
հաստատեաց աղեղն պղնձի զբազուկս
36 իմ։ Եւ ետուր ինձ [9]պաշտպանութիւն
փրկութեան իմոյ. եւ հնազանդութիւն իմ
37 յաճախեաց ինձ Ընդարձակութիւն ի ներ-
քոյ գնացից իմոց", եւ ոչ սասանեցան
38 բարձք իմ։ Հալածեցից զթշնամիս իմ
եւ ապականեցից զնոսա, եւ ոչ դարձայց
39 մինչեւ սպառեցից զնոսա։ Խորտակեցից
զնոսա եւ մի՛ կանգնեսցին, անկցին ի
40 ներքոյ ոտից իմոց։ Եւ զօրացուցես
զիս զօրութեամբ ի պատերազմ, եւ կո-
րացուսցես ի ներքոյ իմ զյարուցեալսն
41 ի վերայ իմ։ Եւ զթշնամիս իմ դարձու-
ցեր յետս յինէն եւ զատեցիս [10]իմ կո-
42 տորեցեր։ Աղաղակեսցեն՝ եւ ոչ ոք իցէ
որ օգնեսցէ." առ Տէր՝ եւ ոչ լուաւ նոցա։
43 Եւ լեսի զնոսա իբրեւ զհող երկրի, եւ
իբրեւ զկաւ գոհաց մանրեցից զնոսա։
44 Եւ փրկեսցես զիս ի կռուոյ [11]ժողովրդոց,
եւ պահեսցես զիս ի գլուխ ազգաց. ժո-
ղովուրդ զոր ոչ գիտէի՝ ծառայեաց ինձ,
45 [5]եւ ի լուր ունկան լուան ինձ։" Որդիք
օտարոտիք ստեցին ինձ, եւ ի լուր ա-
46 կանջաց լուան ինձ. Որդիք օտարոտիք
[12]ընկեսցին ի բաց, եւ սխալեսցին ի պա-
47 շարմանց իւրեանց"։ Կենդանի է Տէր եւ
օրհնեալ է [13]Պահապանն իմ եւ բարձ-
րասցի Աստուած իմ [14]պահապան փրկու-
48 թեան իմոյ։ Հզօր Տէր որ առնէ զվրէժ-
խնդրութիւն, խրատէ զժողովուրդս ի
49 ներքոյ իմ։ Եւ հանէ զիս ի թշնամեաց
իմոց. եւ յարուցելոց ի վերայ իմ բարձ-
րացուսցես զիս, յառնէ անիրաւութեանց
50 փրկեսցես զիս։ Վասն այսորիկ գոհա-
ցայց զքէն ի մէջ ազգաց, Տէր, եւ
51 անուան քում սաղմոս ասացից։ Մեծա-
ցուցանէ զփրկութիւն թագաւորի, եւ
առնէ ողորմութիւն օծելոյ իւրում Դաւթի
եւ զաւակի նորա մինչեւ յաւիտեան։

ԳԼ. ԻԳ

1 Եւ այս են բանք Դաւթի վերջինք. [15]Հա-
ւատարիմ Դաւիթ որդի Յեսսեայ, եւ

[1]Եբր. յաւուր [2]Եբր. ողորմածին ողորմած [3]Եբր. աչք քո ի վերայ ամբարտաւանից զի խոնարհեցուսցես [4]Եբր. ի վերայ հինի [5]Եբր. պահուէ [6]Եբր. ասպար [7]Եբր. վէմ [8]Եբր. Աստուած է բերդ իմ ամուր որ առնէ կատարեալ

[9]Եբր. զասպար փրկութեան քո, եւ հեզութիւն քո մեծացոյց զիս։ (37) Ընդարձակեցեր զգնացս իմ ընդ ինեւ [10]Եբր. իմ, եւ կոտորեցի զնոսա։ (42) Աղաղակեցին եւ ոչ ոք էր որ օգնէր, աղաղակեցին [11]Եբր. ժողովրդեան իմոյ [12]Եբր. մաշեցան, եւ սարսափեցան ի թաքստենէ իւրեանց [13]Եբր. Վէմն [14]Եբր. վէմ [15]Եբր. Ասէ

[1]հաւատարիմ այր, զոր կացոյց Տէր
յօծեալ Աստուծոյ ի վերայ" Յակոբայ.
2 եւ վայելուչ [2]են երգք" Իսրայելի։ Հոգի
Տեառն խօսեցաւ յիս, եւ բան նորա ի
3 լեզուի իմում։ Ասէ Աստուած Իսրայելի,
ընդ իս խօսեցաւ [3]Պահապանն Իս-
րայելի. [4]առակուիմ ասացի ի մարդ.
ո՞վ է որ կայցի զերկիւղէ Տեառն եւ
4 զԱստուծոյ, ի լոյս առաւօտու։ Ծագ-
եալ զարեգակն ընդ առաւօտս եւ ոչ
նուաղեաց ի լուսոյ. եւ իբրեւ անձրեւոյ
5 զալարւոյ յերկրէ։ Զի ոչ եթէ այս տուն
իմ է ընդ հզօրին Աստուծոյ." ուխտ
յաւիտենական եդ ինձ, պատրաստական
յամենայն ժամանակի պահել, զի ամենայն
փրկութիւն իմ եւ ամենայն կամք [5]իմ
6 Տէր։ Զի մի բողբոջեսցի անօրէնքն. իբ-
րեւ զփուշ մերժեալ են ամենեքին նոքա՝
7 որ ոչ ձեռամբ առնուցուն։ Եւ աշխա-
տեսցի ի նոսա այր, եւ զամենայն եր-
կաթ եւ զփայտ նիզակի հրով այրեսցէ,
եւ բորբոքեսցին ամօթալ իւրեանց։"
8 Այս անուանք են զօրավարացն Դաւթի.
[6]Յեբուսթէ Քանանացի՝ իշխան երիր մա-
սինն, Ադինոն Ասոնեացի," ի վերայ ութ
հարիւրոց վիրաւորաց ի միում նուագի։
9 Եւ յետ նորա [7]Եղէանան որդի հօրեղ-
բօր նորա՝ որդի Աովացւոյն. ի մէջ երից
զօրավարացն Դաւթի, յԹեմա ի նախա-
տել նորա" զայլազգիս, ուր գումարե-
ցան ի պատերազմ եւ [8]խրախուսեաց այր
10 Իսրայելի, Եւ նա յարեաւ եւ եհար յայ-
լազգեացն [9]մինչեւ մաշեցաւ ձեռն նո-
րա սրովն. եւ" արար Տէր փրկութիւն
մեծ յաւուր յայնմիկ. եւ զօրն [10]նստէր
յետոյ նորա, բայց միայն ի կապուտն։
11 Եւ յետ նորա Սամաա որդի [11]Սիսայ
Արուկայի։ Եւ ժողովեցան այլազգիքն
ի [12]Ծնօսն, եւ անդ էր վիճակ անդի
լի ոսպամբ, եւ զօրն փախեաւ յերեսաց
12 այլազգեացն. Եւ արձանացաւ ի մէջ վի-
ճակին եւ ապրեցոյց զնա, եւ եհար զայ-
լազգիսն, եւ արար Տէր փրկութիւն մեծ։
13 Եւ իջին երեք յերեսնից, եւ [13]իջին ի
Կասոլա" առ Դաւիթ յայրն Ոդողոմայ,
գունդք այլազգեացն բանակեալ էին ի
14 հովիտս Ռափայնոցն։ Եւ Դաւիթ էր
յայնժամ յամրոցին, եւ ճամբար այլազգ-
15 եացն էր յայնժամ ի Բեթղեհեմ։ Եւ
ցանկացաւ Դաւիթ եւ ասէ, Ո՞ արբու-
ցանէր ինձ ջուր ի ջրհորոյն Բեթղեհեմի
16 որ առ դրանն է։ [14]Եւ գունդք այլազգ-
եացն էին ի Բեթղեհեմ։" Եւ հատին ե-
րեք զօրավարք զբանակն այլազգեաց,
եւ հանին ջուր ի ջրհորոյն Բեթղեհեմի
որ առ դրանն, եւ առին եւ եկին առ
Դաւիթ. եւ ոչ կամեցաւ ըմպել զայն,
17 այլ նուիրեաց զայն Տեառն. Եւ ասէ,
Քաւ լիցի ինձ, Տէր, առնել զայդ, եթէ
զարիւն արանց երթելոց ոգուօք չափ
ըմպիցեմ. եւ ոչ կամեցաւ ըմպել զայն։
Զայս արարին երեք զօրավարքն։
18 Եւ Աբեսսա եղբայր Յովաբայ որդի
Շարուհեայ, նիքն իշխան ի մէջ երիցն.
եւ նա կանգնեաց զնիզակն իւր ի վերայ
երեքհարիւրոց վիրաւորաց. եւ նորա ա-
19 նուն ի մէջ երիցն. Յայնցանէ փառա-
ւորեալ, եւ եղեւ նոցա իշխան, եւ
մինչեւ [15]յերիսն ոչ եհաս։
20 Եւ Բանեա որդի Յովիդայեայ, որդի առն
զօրաւորի, որոյ բազում գործ գործեալ
էր ի Կաբէսեղա. եւ նա եհար զերկուս
որդիսն Արիելի Մովաբացւոյ, եւ նա էջ
եւ սպան զառեւծն ի մէջ գբին յաւուր
21 ձեան։ Եւ նա սպան զայրն երեւելի
զայրն Եգիպտացի. եւ ի ձեռին Եգիպ-
տացւոյն էր նիզակ [14]իբրեւ զփայտ կա-
մրրջի". եւ էջ առ նա [16]նիզակաւն, եւ
յափշտակեաց զնիզակն ի ձեռաց Եգիպ-
տացւոյն, եւ սպան զնա նովին նիզա-
22 կաւ։ Զայս արար Բանեա որդի Յովիդ-
եայ. եւ նորա անուն ի մէջ երիցն զօ-
23 րաւորաց. [17]Յերիցն փառաւորեալ, եւ առ
[15]երիսն ոչ հասանէր. եւ կարգեաց զնա

[1]Եբր. ասէ այրն հաստատեալ բարձր, օծեալն Աստուծոյ [2]Եբր. երգիչն [3]Եբր. Վէմն [4]Եբր. Որ տիրէն մարդկան՝ արդարութեամբ տէրեւցէ, որ տիրէն՝ երկիւղիւ Աստուծոյ։ (4) Եղիցի իբրեւ զլոյս առաւօտու ի ծագել արեգական, առաւօտու՝ առանց ամպոց ի բուսանել զոլար խոտոյ յերկրէ, ի ծագել լուսոյ զկնի անձրեւոյ։ (5) Թէպէտեւ ոչ այսպէս է տուն իմ ընդ Աստուծոյ, այլ [5]Եբր. իմ դա է, թէպէտեւ ոչ տացէ բողբոջել։ (6) Սակայն անօրէնք, ամենեքին մերժեալ են իբրեւ զփուշ որ ոչ առնուցու ձեռամբ։ (7) Այր որ մերձեսցի ի նոսա՝ վառեսցի երկաթով եւ փայտիւ նիզակի, եւ նոքա այրելով այրեսցին հրով ի դադարս իւրեանց։ [6]Եբր. Յոսեբ-բասեբեթ Թաքեմոնացի, գլուխ երրորդացն. նա ամբարձ զնիզակ իւր [7]Եբր. Եղիազար որդի Դովդայ որդւոյ Ահովհացւոյն. ի մէջ երից զօրավարացն ընդ Դաւթի, ի նախատել նոցա [8]Եբր. փախեաւ [9]Եբր. մինչեւ խոնջեցաւ ձեռն նորա եւ [10]Եբր. դառնայր

[11]Եբր. Ագեայ [12]Եբր. գունդ [13]Եբր. եկին յաւուրս հնձոց [14]ՅԵբր. պակասի [15]Իմա՛ չէրէին ոչ յառաջնոցն յերեցն [16]Եբր. գաւազանաւն [17]Եբր. Յերեսնիցն

Դաւիթ ի վերայ [1]համբարաց իւրոց։
24 [2]Եւ այս անուանք են զօրաւորացն
Դաւթի արքայի." Ասայէլ եղբայր Յո-
վաբայ, նա էր ի մէջ երեսնիցն. Եղէա-
նան՝ որդի [3]Ադիուդայ հօրեղբօր նորա ի
25 Բեթղեհեմ", Սամաա Ռուդացի, [4]Անլոմ
26 Կեղովթացի,"Ադդասփեզղատացի, Իրաս՝
27 որդի Եսկաթայ Թեկուացի, Աբիեզեր
Անաթովթացի՝ յորդւոց Ասովթացւոյն,
28 [5]Եղոմն Ալիոյացի, Նոերէ" Նետոփաթացի,
29 Աղափ՝ որդի [6]Փամփանայ, Անաուէ Նեփ-
ղաթացի", Եթթի՝ որդի Ռիբայ ի Գաբաա-
30 թայ որդւոյն[7]Բենիամինի Եփրաթացւոյ",
31 Աղդայի ի ձորոյն Գոլասայ, Աբիեղբոն [8]ի
գաշտավայրացն Ադդայի ի Նաքաղայ,
Գաարիէ Ղադաբարացի, Ասմոն Բարա-
32 սամացի", Եղիաս Սաղաբոնացի, որդի Ա-
33 սանայ՝ Յովնաթան, Սամնան Արովդացի,
34 Եղիամ՝ որդի Արեդայ Արաթիրացի, Աղի-
փաղեթ՝ որդի Ասիբացւոյ՝ որդի Ամաքայ,
Եղիաբ՝ որդի Աքիտոփելայ Գաղամոնաց-
35 ւոյ, Ասարէ Կարմեղացի, [9]Տուուր Եր-
36 քացի, Գաղա՝ որդի Նաթանայ ի զօրու-
37 թենէ որդի Գաղաադայ, Եղիէ Ամմոնացի,
Գեղովրէ Բերովթացի", կապարճակիր
38 Յովաբայ որդւոյ Շարուհեայ, Իրաս Յե-
թերացի, [10]Գարէբ Բեթանացի", Ուրիա
39 Քետացի։ Ընդ ամենայն երեսուն եւ
եւթն. [2]այլք ի հեղեղատէն Գաղաբեայի
որդւոյ Արաբովթացւոյն"

Գլ. ԻԴ

1 Եւ յաւել սրտմտութիւն Տեառն բոր-
բոքել ի վերայ Իսրայելի, եւ դրդուեաց
զԴաւիթ ի նոսա եւ ասէ, Երթ թուեա
2 զԻսրայէլ եւ զՅուդա։ Եւ ասէ արքայ
ցՅովաբ իշխան զօրուն որ ընդ նմա,
Շրջեա ընդ ամենայն ցեղսն Իսրայելի՝ ի
Դանայ մինչեւ ցԲերսաբէէ, եւ համարեա
արա ժողովրդեանդ, եւ գիտացից զթիւ
3 դորա։ Եւ ասէ Յովաբ ցարքայ, Յաւելցէ
Տէր[11] ի ժողովուրդն որչափ ենն՝ հա-
րիւրապատիկ, եւ տեսցեն աչք անտառն

[1]Եբր. թիկնապահաց [2]Յեբր. զ-ի-ոտ [3]Եբր.
Դոդոյ Բեթղեհեմացւոյ [4]Եբր. Եղիկա Հա-
րոդացի [5]Եբր. Սեղմոն Աքուքացի, Մաարա
[6]Եբր. Բաանայ Նետոփաթացւոյ [7]Եբր. Բենիա-
մինի, Բանեա Փարաթոնացի [8]Եբր. Արաբա-
թացի, Ազամովթ Բարումացի, [9]Եբր. Փաարայ
Արբացի, (36) Իգաղ որդի Նաթանայ Սոբացի,
Բանի Գաթացի, (37) Սեղեկ Ամմոնացի, Նաարայ
Բերովթացի [10]Եբր. Գարեբ Յեթերացի [11]Եբր.–
յեցէն յաւելու, Աստուած քո

խմոյ արքայի. եւ տէր իմ արքայ ընդէ՞ր
4 կամիցի զբանդ զայդ։ Եւ սաստկացաւ
բանն արքայի առ Յովաբ եւ առ իշխանս
զօրուն. եւ ել Յովաբ եւ [12]ամենայն
իշխանք զօրութեան" յերեսաց արքայի՝
անել համարս ժողովրդեանն Իսրայելի։
5 Եւ անցին ընդ Յորդանան, եւ [13]պատե-
ցան ընդ Արոյեր" յաջմէ քաղաքին, որ
ի մէջ ձորոյն Գադայ եւ [14]Եղէազարու,
6 Եւ անցին ընդ Գաղաադ, եւ [15]ի Թա-
բասոն եւ յԵսթոն եւ յԱպաւէ. եւ հա-
սին ի Դան", եւ պատեցան զՍիդոնաւ։
7 Եւ եկին [16]ի Մափսար Տիւրոսի, եւ յա-
մենայն քաղաքս Խեւացւոյն եւ Քանա-
նացւոյն. եւ եկին ի հարաւոյ կողմանէ
8 [17]ի Յուդա եւ" ի Բերսաբէէ։ Եւ շրջեցան
ընդ ամենայն երկիրն, եւ եկին հասին
ի կատարել ինն ամսոց եւ աւուրց քսա-
9 նից՝ յԵրուսաղէմ։ Եւ ետ Յովաբ զհա-
մար համարոյ ժողովրդեանն արքայի.
եւ եղեւ Իսրայելի ութ հարեւր հազար
արանց զօրու սուսերամերկաց, եւ այր
Յուդայ հինգ հարեւր հազար արանց
[2]մարտկաց։
10 Եւ եհար զԴաւիթ սիրտն իւր յետ
թուելոյ զժողովուրդն, եւ ասէ Դաւիթ
ցՏէր, Մեղայ յոյժ զոր արարի. եւ
արդ անցո զանօրէնութիւն ի ծառայէ
11 քումմէ, զի ընդունայնացայ յոյժ։ Եւ
յարեաւ Դաւիթ ընդ առաւօտն. եւ բան
Տեառն եղեւ ի վերայ Գադայ մարգարէի
12 տեսանողի [18]առ Դաւիթ", եւ ասէ. Երթ
խօսեաց ընդ Դաւթի եւ ասասցես. Այս-
պէս ասէ Տէր, Երիս ինչս առնեմ ի վե-
րայ քո, եւ ընտրեսցես քեզ զմի ի նո-
13 ցանէ, եւ արարից քեզ զայն։ Եւ եմուտ
Գադ առ Դաւիթ, եւ պատմեաց նմա
եւ ասէ ցնա, Ընտրեա քեզ լինել, եթէ
եկեսցէ սով [19]զերիս ամս յերկիր քո,
կամ զերիս ամիսս փախչել յերեսաց
թշնամեաց քոց եւ լինիցին հալածել
զքեզ, կամ լինել զերիս աւուրս մահ
յերկրի քում. եւ արդ ծանիր եւ տես
զինչ պատասխանի տաց առաքչին իմոյ։
14 Եւ ասէ Դաւիթ ցԳադ, [20]Վտանգ է ինձ
յամենայն կողմանց" յոյժ. բայց արդ
անկայց ի ձեռս Տեառն, զի բազում են

[12]Եբր. իշխանք զօրուն [13]Եբր. բանակեցան յԱ-
րոյեր [14]Եբր. ի Յազեր [15]Եբր. յերկիրն
Թաբթիմոգասայ, եւ եկին ի Դանէասն [16]Եբր.
յամրոցն [17]Եբր. Յուդայ [18]Եբր. Դաւթի
[19]Եբր. զեւթն [20]Եբր. Տագնապ է ինձ

զԹուԹիւնք նորա [1]յոյժ , եւ մի՛ անկայց
ի ձեռս մարդոյ . [1]եւ ընտրեաց իւր
ԴաւիԹ զմահն . եւ էին աւուրք հնձոյ
15 ցորենոյ" Եւ ետ Տէր մահ յԻսրայէլ յա-
ռաւօտէ մինչեւ [2]ցճաշամամ . եւ սկսաւ
սատակումն ի ժողովրդեանն", եւ մեռաւ
ի ժողովրդենէ անտի ի Դանայ մինչեւ
ցԲերսաբէէ՝ եւԹանասուն հազար արանց։
16 Եւ ձգեաց հրեշտակն [1]Աստուծոյ զձեռն
իւր յԵրուսաղէմ ապականել զնա . եւ
մխիԹարեցաւ Տէր ի վերայ չարեացն ,
եւ ասէ ցհրեշտակն որ ապականէր
զժողովուրդն , Շատ է , արդ ամփոփեա
զձեռն քո . եւ հրեշտակն Տեառն կայր
17 առ կալոյն Ոռնեայ Յեբուսացւոյ։ Եւ
ասէ ԴաւիԹ ցՏէր , իբրեւ ետես զհրեշ-
տակն որ հարկանէր զժողովուրդն, ասէ,
Աւասիկ կամ , ես մեղայ , ես [1]հովիւս
յանցեայ , եւ դոքա ոչխարքդ զի՞ արա-
րին. եղիցի ձեռն քո յիս եւ ի տուն
հօր իմոյ ։
18 Եւ եկն Գադ առ ԴաւիԹ յաւուր յայն-
միկ եւ ասէ ցնա , Ել եւ կանգնեա Տեառն
19 սեղան ի կալն Ոռնեայ Յեբուսացւոյ։ Եւ
ել ԴաւիԹ ըստ բանին Գադայ , որպէս
20 եւ պատուիրեաց նմա Տէր ։ Եւ [3]խոնար-
հեցաւ Ոռնա իբրեւ" ետես զարքայ եւ
զծառայսն նորա երԹեալս առ նա , եւ
ել առ նա եւ երկիր եպագ [4]Տեառն ի
21 վերայ երեսաց իւրոց յերկիր ։ Եւ ասէ
Ոռնա , Զի՞ է զի եկն տէր իմ արքայ
առ ծառայ իւր ։ Եւ ասէ ԴաւիԹ, Գնել
ի քէն զկալս , շինել սեղան Տեառն. զի
դադարեսցէ ապականուԹիւն ի ժողո-
22 վրրդենէն ։ Եւ ասէ Ոռնա ցԴաւիԹ ,
Առցէ եւ մատուսցէ տէր իմ արքայ
[1]Տեառն , որպէս եւ հաճոյ իցէ առաջի
աչաց նորա . ահաւասիկ եզինքս յողջա-
կէզ, եւ անիւքդ եւ կահ եզանցդ ի փայտ։
23 Զամենայն ետ [5]Ոռնա արքային". եւ ասէ
Ոռնա ցարքայ , Տէր Աստուած քո [6]օրհ-
24 նեսցէ զքեզ ։ Եւ ասէ արքայ ցՈռնա ,
Ոչ այդպէս , այլ գնելով գնեցից ի քէն
գնոց, եւ ոչ մատուցից Տեառն Աստուծոյ
իմոյ ողջակէզ ձրի . եւ գնեաց ԴաւիԹ
զկալն եւ զեզինսն արծաԹոյ յիսուն սկեղ։
25 Եւ շինեաց անդ ԴաւիԹ սեղան Տեառն
[1]Աստուծոյ , եւ եհան ողջակէզս եւ խա-
ղաղականս ի վերայ նորա ։ Եւ [7]յաւել
Սողոմոն ի սեղանն յետոյ , զի փոքր էր
զառաջինն ։ Եւ լուաւ Տէր" երկրին ,
եւ արգելաւ սատակումն յԻսրայելէ ։

[1] Եբր· զոյժ [2] Եբր· ի սահմանեալ ժամանակն
[3] Եբր· Հայեցաւ Ոռնա, եւ

[4] Եբր· արքայի [5] Եբր· Ոռնա արքայ՝ արքայի
[6] Եբր· ընկալցի [7] Եբր· մատուցաւ աղերս առ Տէր վասն

# ԳԼՈՒԽՔ ԵՐՐՈՐԴ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

| | Գլ. | Համ. |
|---|---|---|
| ցան տան ցեղքն ի նմանէ ։ | ԺԲ. | 16 |
| Եւ զի արհամարհեալ զնա՝ քարկոծեցին զհարկապետն նորա ։ | ԺԲ. | 18 |
| Զի թագաւորեցոյց իւր Իսրայէլ զՅերոբովամ Նաբատեանց, եւ Ռոբովամ կազմէր պատերազմել ։ | ԺԲ. | 20 |
| Զի արգել Տէր զՌոբովամ չպատերազմել ։ Եւ զի արար Յերոբովամ զերկուս երինջսն ի պաշտօն Իսրայէլի, եւ ինքն իսկ զոհէր ։ | ԺԲ. | 22 |
| Անդ հասեալ մարգարէն բանիւ Աստուծոյ պատառեաց զսեղանն, եւ գօսացոյց զձեռն Յերոբովամայ, եւ դարձաւ ինքն ի գնալ ։ | ԺԳ. | 1 |
| Զի նենգեալ նմա մարգարէն ծեր որ ի Բեթէլ դարձոյց զնա ուտել հաց. եւ ի գնալն անդրէն եհեղձ զնա առեւծ, եւ ծերն թաղեաց զնա ։ Եւ պատգամ Տեառն բարկութեամբ ի ձեռն Աքիայ Սիլովացւոյ ի վերայ տանն Յերոբովամայ, եւ մահ նորա. եւ զի Նաբատ որդի նորա տիրեաց ընդ նորա ։ | ԺԳ. | 11 |
| Զի ի չարիս հասանէ Ռոբովամ. եւ յաւուրս նորա ել Սուսակիմ Եգիպտացի յԵրուսաղէմ, և առ զգանձս տաճարին ։ | ԺԴ. | 21 |
| Յութուտասն ամին Յերոբովամայ թագաւորէ Աբիա, եւ գնաց նա ի մեղս հօր իւրոյ ։ | ԺԴ. | 30 |
| Ի քսան ամին Յերոբովամայ թագաւորէ Ասա, եւ արար ուղղութիւն. եւ վարձեաց զարքայն Ասորւոց ընդդէմ Բաասայ արքային Իսրայէլի ։ | ԺԵ. | 8 |
| Ի չորրորդ ամին Ասայի սպան Բաաս զՆաբատ, եւ թագաւորեաց ամս քսան եւ չորս եւ արար չարիս. եւ ի քսան եւ ութ ամին Ասայի թագաւորեաց Իլա որդի Բաասայ ամս երկուս, եւ սպանաւ ։ | ԺԵ. | 24 |
| Յերեսուն ամի Ասայի թագաւորեաց Զամբրի աւուրս եւթն, եւ այրեաց զնա Ամրի, եւ թագաւորեաց ամս երկոտասան, եւ շինեաց զՍամարիա, եւ արար չարիս եւ մեռաւ ։ | ԺԶ. | 15 |
| Յերեսներորդ ութերորդ ամին Ասայի՝ թագաւորէ Աքաաբ որդի Ամրեայ՝ ամս քսան եւ երկուս. եւ շինեաց զԵրիքով ։ | ԺԶ. | 28 |
| Յաւուրս Աքաաբու փակեցան երկինք յանձրեւոյ, եւ եկն Եղիա ի Սարեփթա, ուր եւ յարոյց զորդի կնոջն որ զնա ընկալաւ ։ | ԺԷ. | 1 |
| Հրաման առ Եղիա, եւ պատահեալ Աբդիու՝ հրամայեաց ժողովել զԻսրայէլ եւ զմարգարէսն Յեզաբելայ ի Կարմեղոս ։ | ԺԸ. | 1 |
| Թէ զիարդ այպանեաց զքուրմսն վասն անօգուտ զոհին ։ | ԺԸ. | 20 |
| Եւ թէ զիարդ ինքն փառաւորեաց զԱստուած սուրբ պատարագաւն, եւ կոտորեաց զքուրմսն Բելայ ։ | ԺԸ. | 30 |
| Զի յաղօթս Եղիայի եղեւ անձրեւ մեծ, եւ զի սպառնացաւ Յեզաբէլ սպանանել զԵղիա ։ | ԺԸ. | 41 |
| Երկուցեալ Եղիայի եւ կերակրեալ ի հրեշտակէ, գնաց այնու զաւուրս քառասուն եւ եկն ի Քորեբ. եւ ամբաստան լեալ Տեառն զԻսրայէլէ, հրաման ի Տեառնէ առեալ եկն եւ կոչեաց զԵղիսէ ։ | ԺԹ. | 3 |
| Արքայն Ասորւոց պաշարեաց զՍամարիա, եւ բանիւ Տեառն ել Աքաաբ եւթն հազարօքն, եւ յաղթեաց նմա ։ | Ի. | 1 |
| Կրկին անգամ յաղթեալ ըմբռնեաց զարքայն Ասորւոց, և արձակեաց ։ | Ի. | 26 |
| Զի վասն այնր բանի գանել ետ զինքն մարգարէն, եւ բանիւ Տեառն սպառնացաւ ի վերայ Աքաաբու ։ | Ի. | 35 |
| Զի ի պատճառս այգւոյն իւրոյ նենգ կրեալ ի Յեզաբելայ քարկոծեցաւ Նաբովթ, եւ թէ սգաց ընդ այնր Աքաաբ ։ | ԻԱ. | 1 |
| Պատգամ վրիժուց ի Տեառնէ վասն այնր ի ձեռն Եղիայի առ տունն Աքաաբու ։ | ԻԱ. | 17 |
| Պատրաստեցան Աքաաբ եւ Յովսափատ արքայ Յուդայ պատերազմել ընդ Ռամաաթ Գաղաադու, եւ սուտ մարգարէքն քաջալերէին ։ | ԻԲ. | 2 |
| Ըստ բանին Տեառն ի ձեռն Միքիայ սպանաւ Աքաաբ ի պատերազմի անդ ։ | ԻԲ. | 13 |
| Յամին չորրորդի Աքաաբու թագաւորեաց Յովսափատ որդի Ասայի ամս քսան եւ հինգ, արար ուղղութիւն եւ մեռաւ ։ | ԻԲ. | 41 |
| Յամին եւթնուտասներորդի Յովսափատայ թագաւորեաց յԻսրայէլի Ոքոզիա որդի Աքաաբու ամս երկուս, եւ արար չարիս եւ մեռաւ ։ | ԻԲ. | 52 |



# ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

## ԵՐՐՈՐԴ

### ԳԼՈՒԽ Ա

1 Եւ արքայ Դաւիթ ծերացեալ եւ
անցեալ զաւուրբք, եւ ծածկէին
2 զնա հանդերձիւք եւ ոչ ջեռնոյր։ Եւ
ասեն ծառայք նորա, Խնդրեսցեն տեառն
մերոյ արքայի աղջիկ մի կոյս, եւ կացցէ
առաջի արքայի եւ եղիցի դարմանիչ, եւ
ննջեսցէ ընդ նմա եւ ջեռցի տէր մեր
3 արքայ։ Եւ խնդրեցին աղջիկ մի գեղե-
ցիկ յամենայն սահմանացն Իսրայելի,
եւ գտին զԱբիսակ Սոմնացի, եւ ածին
4 զնա առ արքայ։ Եւ էր աղջիկն գեղե-
ցիկ յոյժ, եւ [1]ջեռուցանէր զարքայ եւ
պաշտէր զնա. եւ արքայ ոչ գիտաց զնա։
5 Եւ Ադոնիա որդի Ագիթայ ամբառնայր.
ասէ, Ես թագաւորեցից. եւ արար իւր
կառս եւ հեծեալս, եւ յիսուն այր սուր-
6 հանդակս ընթանալ առաջի նորա։ Եւ
հայրն ոչ արգելոյր զնա, եւ ոչ երբեք
ասէր՝ թէ Ընդէ՞ր արարեր զայդ. եւ
ինքն էր գեղեցիկ տեսանելով, եւ զնա
7 ծնաւ յետ Աբիսողոմայ։ Եւ եղեն բանք
նորա ընդ Յովաբայ որդւոյ Շարուհեայ
եւ ընդ Աբիաթարայ քահանայի. եւ
8 օգնէին Ադոնիայ։ Եւ Սադովկ քահանայ
եւ Բանեա որդի Յովիդայեայ եւ Նա-
թան մարգարէ եւ Սեմէի եւ Ռէի, եւ
[2]որդիք զօրաւորք Դաւթի չէին զհետ
9 Ադոնիայ։ Եւ եզեն Ադոնիա ոչխարս եւ
եզինս եւ [3]գառինս առ վիմին Զօողե-
թայ, որ է մօտ [4]յերկիրն Ռովգելայ. եւ
կոչեաց զամենայն զեղբարս իւր զորդիս
արքայի, եւ զամենայն զարս Յուդայ
10 զծառայս արքայի. Եւ զՆաթան մար-
գարէ եւ զԲանեա եւ զզօրաւորսն եւ
զՍողոմոն զեղբայր իւր ոչ կոչեաց։
11 Եւ խօսեցաւ Նաթան [2]մարգարէ ընդ
Բերսաբեէ մօր Սողոմոնի եւ ասէ, Ո՞չ
լուար զի թագաւորեաց Ադոնիա որդի
Ագիթայ, եւ տէր մեր [2]արքայ Դաւիթ
12 ոչ գիտաց։ Եւ արդ եկ տաց քեզ խրատ,
եւ ապրեցուսցես զանձն քո եւ զանձն
13 որդւոյ քո Սողոմոնի։ Երթ մուտ առ
արքայ Դաւիթ, եւ խօսեսցիս ընդ նմա
եւ ասասցես, Ո՞չ դու, տէր իմ արքայ,
երդուար աղախնոյ քում եւ ասացեր թէ
Սողոմոն որդի քո թագաւորեսցէ յետ
իմ, եւ նա նստցի յաթոռ իմ. եւ այն
14 զինչ է զի թագաւորեաց Ադոնիա։ Եւ
ահա մինչդեռ դու խօսիցիս անդ ընդ
արքայի, ես մտից եւ լցից զբանս քո։
15 Եւ եմուտ Բերսաբէէ առ արքայ ի
սենեակն. եւ արքայ ծերացեալ էր յոյժ,
եւ Աբիսակ Սոմնացի կայր ի սպասու
16 արքայի։ Խոնարհեցաւ Բերսաբէէ եւ
երկիր եպագ արքայի։ Եւ ասէ արքայ,
17 Զի՞ է քեզ։ Եւ նա ասէ, Տէր իմ ար-
քայ, դու երդուար ի Տէր Աստուած քո՝
աղախնոյ քում եւ ասացեր, թէ Սողո-
մոն որդի քո թագաւորեսցէ յետ իմ, եւ
18 նա նստցի յաթոռ իմ. Եւ ահա Ադոնիա
թագաւորեաց, եւ դու, տէր իմ արքայ,
19 ոչ գիտացեր. Եւ եզեն արջառս եւ ոչ-
խարս եւ [3]գառինս բազումս, եւ կոչեաց
զամենայն որդիս արքայի եւ զԱբիաթար
քահանայ եւ զՅովաբ իշխան զօրուն.
եւ զՍողոմոն զծառայ քո ոչ կոչեաց։
20 Եւ, տէր իմ արքայ, աչք ամենայն Իս-
րայելի ի քեզ են, պատմել նոցա թէ ո՛
նստցի յաթոռ տեառն իմոյ արքայի յետ
21 նորա. Եւ եղիցի՝ եթէ ննջեսցէ տէր իմ
արքայ ընդ հարս իւր, լինիցիմ ես եւ
որդի իմ Սողոմոն մեղապարտք։
22 Եւ մինչդեռ նա խօսէր ընդ արքայի,
23 եկն Նաթան մարգարէ։ Եւ պատմեցաւ
արքայի, ասեն, Ահաւասիկ Նաթան մար-
գարէ. եւ եմուտ առաջի արքայի, եւ
երկիր եպագ արքայի ի վերայ երեսաց
24 իւրոց յերկիր. Եւ ասէ Նաթան, Տէր
իմ արքայ, դո՞ւ ասացեր եթէ Ադոնիա
թագաւորեսցէ զկնի իմ, եւ նա նստցի յա-

---

[1]Եբր. դարմանէր [2][3]Եբր. դօլօւէ [3]Եբր. պարարակս [4]Եբր. յաղբերն

25 թոռ իմում. Զի էջ այսօր եւ եզեն ար-
ջառս եւ ոչխարս եւ [1]գառինս բազումս,
եւ կոչեաց զամենայն որդիսն արքայի
եւ զիշխանս զօրուն եւ զԱբիաթար քա-
հանայ. եւ ահա ուտեն եւ ըմպեն առաջի
նորա, եւ ասեն, Կեցցէ արքայ Ադո-
26 նիա։ Եւ զիս զծառայ քո, եւ զՍա-
դովկ քահանայ եւ զԲանեա որդի Յովի-
դայեայ եւ զՍողոմոն զծառայ քո ոչ
27 կոչեաց։ Եթէ ի ձեռն տեառն իմոյ ար-
քայի եղեւ բանն այն, եւ ոչ յայտնեցեր ծա-
ռայի քում թէ ո՛ նստցի յաթոռ տեառն
իմոյ արքայի յետ նորա։
28 Պատասխանի ետ Դաւիթ արքայ եւ
ասէ, Կոչեցէք առ իս զԲերսաբէէ։ Եւ
եմուտ առաջի նորա, եւ եկաց յանդի-
29 ման նորա։ Եւ երդուաւ արքայ եւ
ասէ, Կենդանի է Տէր, որ փրկեաց
30 զանձն իմ յամենայն նեղութենէ, Զի
որպէս երդուայ ի Տէր Աստուած Իսրա-
յելի եւ ասեմ, եթէ Սողոմոն որդի քո
թագաւորեսցէ յետ իմ, եւ նա նստցի
յաթոռ իմ փոխանակ իմ, եթէ ոչ այս-
31 պէս արարից յաւուր յայսմիկ։ Եւ խո-
նարհեցաւ Բերսաբէէ ի վերայ երեսաց
իւրոց յերկիր, եւ երկիր եպագ արքայի
եւ ասէ, Կեցցէ տէր իմ արքայ Դաւիթ
յաւիտեան։
32 Եւ ասէ արքայ Դաւիթ, Կոչեցէք առ
իս զՍադովկ քահանայ եւ զՆաթան մար-
գարէ եւ զԲանեա որդի Յովիդայեայ։
33 Եւ մտին առաջի արքայի։ Եւ ասէ ցնոսա
արքայ, Առէք ընդ ձեզ զծառայս տեառն
ձերոյ, եւ հեծուցէք զՍողոմոն զորդի
իմ ի ջորւոջն իմում, եւ իջուցէք զնա
34 ի Գիհոն. Եւ օծցեն զնա անդ Սադովկ
քահանայ եւ Նաթան մարգարէ ի թա-
գաւոր ի վերայ Իսրայելի. եւ փող հա-
րէք եղջերեայն եւ ասասջիք, Կեցցէ
35 արքայ Սողոմոն. Եւ ելջիք զկնի նորա,
եւ մտցէ եւ նստցի յաթոռ իմում, եւ
նա թագաւորեսցէ ընդ իմ. եւ ես եստու
հրաման լինել նմա առաջնորդ ի վերայ
36 Իսրայելի եւ Յուդայ։ Եւ պատասխանի
ետ Բանեա որդի Յովիդայեայ արքայի
եւ ասէ, Եղիցի այդպէս. հաւատարմա-
ցուսցէ Տէր Աստուած տեառն իմոյ ար-
37 քայի։ Եւ որպէս էր Տէր ընդ տեառն
իմում արքայի, եղիցի եւ ընդ Սողո-
մոնի. եւ մեծացուսցէ զաթոռ նորա
քան զաթոռ տեառն իմոյ արքայի Դաւթի։

38 Եւ էջ Սադովկ քահանայ եւ Նաթան
մարգարէ եւ Բանեա որդի Յովիդայեայ,
եւ Քերեթին եւ Ոփելեթին. եւ հեծու-
ցին զՍողոմոն ի ջորւոջն արքայի Դաւթի,
39 եւ տարան զնա ի Գիհոն։ Եւ առ Սա-
դովկ քահանայ զեղջեւրն իւղոյ ի խորա-
նէն եւ օծ զՍողոմոն եւ եհար զփողն
եղջերեայ, եւ ասէ ամենայն ժողո-
40 վուրդն, Կեցցէ արքայ Սողոմոն։ Եւ ել
ամենայն ժողովուրդն զհետ նորա, եւ
պար առեալ պարուք ուրախ լինէին մե-
ծաւ ուրախութեամբ, եւ հնչեաց եր-
կիրն ի բարբառոյ նոցա։
41 Եւ լուաւ Ադոնիա եւ ամենայն բազ-
մականք նորա, եւ կատարեցին նոքա
զուտելն. եւ լուաւ Յովաբ զձայն եղ-
ջերոյն, եւ ասէ, Զի՞նչ է բարբառն որ
42 հնչէ ի քաղաքին։ Եւ մինչդեռ նա խօ-
սէր ահա Յովնաթան որդի Աբիաթարու
քահանայի եկաս. եւ ասէ Ադոնիա,
Մուտ զի այր զօրութեան ես դու, եւ
43 բարութիւնս աւետարանես։ Պատաս-
խանի ետ Յովնաթան եւ ասէ ցԱդոնիա,
Եւ կարի իսկ քաջ. տէր մեր արքայ
44 Դաւիթ թագաւորեցոյց զՍողոմոն. Եւ
առաքեաց ընդ նմա արքայ զՍադովկ
քահանայ եւ զՆաթան մարգարէ եւ
զԲանեա որդի Յովիդայեայ, եւ զՔերե-
թին եւ զՈփելեթին, եւ հեծուցին զնա
45 ի ջորւոջն արքայի. Եւ օծին զնա Սա-
դովկ քահանայ եւ Նաթան մարգարէ ի
թագաւոր ի Գիհոն. եւ ելին անտի ու-
րախութեամբ, եւ հնչեաց քաղաքն. եւ
46 այն է բարբառն զոր լուարուք։ Եւ
նստաւ Սողոմոն յաթոռն արքայութեան.
47 Եւ մտին ծառայքն արքայի օրհնել զտէր
մեր զարքայ Դաւիթ եւ ասեն, Մեծա-
ցուսցէ Աստուած[2] զանուն Սողոմոնի
որդւոյ քո քան զանուն քո, եւ մեծա-
ցուսցէ զաթոռ նորա քան զաթոռ քո։
Եւ երկիր եպագ արքայ յանկողնէ իւր-
48 մէ։ Եւ այսպէս ասաց արքայ, Օրհ-
նեալ է Տէր Աստուած Իսրայելի՝ որ ետ
ինձ այսօր ի զաւակէ իմմէ նստել յա-
49 թոռ իմ, եւ աչք իմ տեսանեն։ Եւ
զարհուրեցան եւ յարեան ամենայն կոչ-
նականքն Ադոնիայ, եւ գնացին այր
իւրաքանչիւր զճանապարհ իւր։
50 Եւ Ադոնիա երկեաւ յերեսաց Սողո-
մոնի, եւ յարեաւ չոգաւ բուռն եհար
51 զեղջերաց սեղանոյն։ Եւ ազդ եղեւ

[1] Եբր. պարարակս

[2] Եբրայեցին յաւելու, քո

*Սողոմոնի եւ ասեն, Ահա Ադոնիա եր-
կեաւ յարքայէ Սողոմոնէ եւ ունի զեղ-
ջերաց սեղանոյն եւ ասէ, Երդուիցի ինձ
այսօր արքայ Սողոմոն, եթէ ոչ սպանցէ
52 զծառայ իւր սրով։ Եւ ասէ Սողոմոն,
Եթէ լինիցի յորդի զօրութեան, ոչ անկցի
ի հերոյ նորա մազ մի ի գետին, ապա
եթէ չարութիւն գտցի ի նմա՝ մահու
53 մեռցի։ Եւ առաքեաց արքայ Սողոմոն,
եւ իջոյց զնա ի վերուստ ի սեղանոյ
անտի։ Եւ եմուտ երկիր եպագ արքայի
Սողոմոնի. եւ ասէ ցնա Սողոմոն, Երթ
ի տուն քո։*

## Գլ. Բ

*1 Եւ մերձեցան աւուրք Դաւթի մեռա-
նելոյ, եւ պատուիրանի ետ Սողոմոնի
2 որդւոյ իւրում, եւ ասէ, Ես երթամ
զճանապարհ ամենայն երկրի. եւ դու
3 զօրացիր եւ եղիցես յայր. Եւ պահես-
ցես զպահպանութիւնս Տեառն Աստու-
ծոյ քո, գնալ ի ճանապարհս նորա եւ
պահել զպատուիրանս նորա եւ զիրա-
ւունս եւ զդատաստանս եւ զվկայու-
թիւնս նորա, զգրեալս յօրէնս Մովսիսի.
զի [1]ի միտ առնուցուս զոր առնիցես,
ըստ ամենայնի զոր պատուիրեմ քեզ"։
4 Զի հաստատեսցէ Տէր զբան իւր զոր
խօսեցաւ վասն իմ եւ ասէ, Եթէ պա-
հեսցեն որդիք քո զճանապարհս իւրեանց
գնալ առաջի իմ ճշմարտութեամբ յա-
մենայն սրտէ իւրեանց եւ յամենայն
անձնէ իւրեանց, ասէ՝ Մի՛ [2]սատակեսցի
5 այր յաթոռոյ Իսրայէլի։ Եւ դու ինքնին
գիտես, զոր ինչ արար ինձ Յովաբ որդի
Շարուհեայ, զոր ինչ արար ընդ երկուս
իշխանս զօրաց Իսրայէլի՝ ընդ Աբեններ
որդի Ներեայ եւ ընդ Ամեսայի որդի
Յեթերայ, եւ սպան զնոսա, եւ [3]խընդ-
րեաց զարիւն պատերազմի ի խաղաղու-
թեան, եւ ետ զարիւն [4]անպարտ ի
կեանս իւրում," ի մէջ իւր եւ ի կօշիկս
6 ոտից իւրոց։ Եւ արասցես ըստ իմաս-
տութեան քում, եւ ոչ իջուսցես զալիս
7 նորա խաղաղութեամբ ի դժոխս։ Եւ
որդւոցն Բերզելեայ Գաղաադացւոյ ա-
րասցես ողորմութիւն, եւ եղիցին ընդ
այնոսիկ որ ուտիցեն ի սեղանոյ քումմէ.
զի այնպէս մերձեցան յիս ի փախչել ի-
մում յերեսաց Աբիսողոմայ եղբօր քո։
8 Եւ ահա ընդ քեզ է Սեմէի որդի Գեր-
եայ որդւոյ Յեմինեայ Բաուրիմացւոյ. եւ
նա անէծ զիս անէծս ցաւագինս՝ յաւուր
յորում գնացեալ երթայի [5]ի Բանակս. եւ
նա էջ ընդ առաջ իմ ի Յորդանան, եւ
երդուայ նմա ի Տէր եւ ասեմ եթէ Ոչ
9 սպանից զքեզ սրով։ Եւ մի՛ անպարտ
առնիցես զնա, զի այր իմաստուն ես
դու, գիտասջիր որպէս առնիցես նմա, եւ
իջուսցես զալիս նորա արեամբ ի դժոխս։
10 Եւ ննջեաց Դաւիթ ընդ հարս իւր, եւ
11 թաղեցաւ ի քաղաքի Դաւթի։ Եւ ա-
ւուրք զոր թագաւորեաց Դաւիթ ի վե-
րայ Իսրայէլի՝ ամք քառասուն. ի Քեբրոն
թագաւորեաց ամս եւթն, եւ յԵրուսաղէմ
թագաւորեաց ամս երեսուն եւ երիս։
12 Եւ Սողոմոն նստաւ յաթոռ Դաւթի
հօր [6]իւրոյ, ամաց երկոտասանից, եւ
պատրաստեցաւ" թագաւորութիւն նո-
րա յոյժ։
13 Եւ եմուտ Ադոնիա որդի Ագիթայ առ
Բերսաբէէ մայր Սողոմոնի, եւ [7]երկիր
եպագ նմա. եւ" ասէ, Խաղաղութի՞ւն է
մուտդ քո. եւ ասէ, Խաղաղութիւն
14 է. Եւ ասէ, Բանք ինչ են իմ ընդ քեզ.
15 եւ ասէ, Խօսեաց. Եւ ասէ ցնա, Դու
ինքնին գիտես զի իմ էր թագաւորու-
թիւնն, եւ յիս վերայ եդ ամենայն Իս-
րայէլ զերեսս իւր ի թագաւոր, եւ դար-
ձաւ թագաւորութիւնն եւ եղեւ եղբօր
16 իմում. զի ի Տեառնէ եղեւ նմա։ Եւ
արդ խնդիր մի խնդրեմ ի քէն, մի՛ դար-
ձուցանիր զերեսս քո յինէն։ Եւ ասէ
17 ցնա Բերսաբէէ, Խօսեաց։ Եւ ասէ ցնա,
Ասասցես զՍողոմոն արքայ, զի ոչ դար-
ձուսցէ զերեսս իւր ի քէն, եւ տացէ
18 ինձ զԱբիսակ Սոմնացի կնութեան։ Եւ
ասէ Բերսաբէէ, Բարւոք է, ես խօսե-
ցայց վասն քո ընդ արքայի։
19 Եւ եմուտ Բերսաբէէ առ արքայ Սո-
ղոմոն խօսել ընդ նմա վասն Ադոնիայ.
եւ յառն եկաց արքայ ընդ առաջ նորա,
եւ [8]համբուրեաց զնա". եւ նստաւ յա-
թոռ իւրում, եւ եդաւ աթոռ մօրն ար-
20 քայի, եւ նստաւ ընդ աջմէ նորա. Եւ
ասէ ցնա, Խնդիր մի փոքր խնդրեմ ես
ի քէն, մի՛ դարձուցանիցես զերեսս քո
յինէն։ Եւ ասէ արքայ, Խնդրեա, մայր
իմ. զի ոչ դարձուցից զերեսս իմ ի քէն։*

[1] Եբր. յաջողեսցես յամենայնի զոր առնիցես, եւ յո եւ դառնայցես [2] Եբր. պակասեսցի քեզ
[3] Եբր. եդ [4] Եբր. պատերազմի

[5] Եբր. ի Մանայիմ [6] Եբր. իւրոյ եւ հաստատեցաւ
[7] Եբր. Բերսաբէէ [8] Եբր. երկիր եպագ նմա

21 Եւ ասէ, Տացի Աբիսակ Սունամացի Ադո-
22 նիայ եղբօր քում կնութեան։ Պատաս-
խանի ետ արքայ Սողոմոն եւ ասէ ցմայր
իւր, Եւ ընդէ՞ր խնդրեցես զԱբիսակ
Սունամացի Ադոնիայ, այլ խնդրեա նմա
զթագաւորութիւնս. զի նա երէց եղ-
բայր է քան զիս, [1]եւ նորա Աբիաթար
քահանայ եւ Յովաբ որդի Շարուհեայ
23 սպարապետ եւ բարեկամ"։ Եւ երդուաւ
արքայ Սողոմոն ի Տէր եւ ասէ, Օն եւ
օն արասցէ ինձ Աստուած եւ օն եւ օն
յաւելցէ՝ եթէ ոչ հակառակ անձին իւ-
24 րոյ խօսեցաւ Ադոնիա զբանս զայս։ Եւ
արդ կենդանի է Տէր, որ [2]արար զիս
եւ եդ" յաթոռ Դաւթի հօր իմոյ, եւ նա
արար ինձ տուն որպէս եւ խօսեցաւ
Տէր, եթէ ոչ այսօր իսկ մեռցի Ադոնիա։
25 Եւ առաքեաց արքայ Սողոմոն ի ձեռն
Բանեայ որդւոյ Յովիդայեայ, եւ սպան
զնա, եւ մեռաւ [3]Ադոնիա յաւուր
յայնմիկ"։
26 Եւ ցԱբիաթար քահանայ ասէ արքայ,
Երթ յԱնաթովթ յագարակ քո, զի այր
մահու ես [4]դու յաւուր յայսմիկ. եւ ոչ"
սպանից զքեզ, զի կրեցեր զտապանակ
ուխտին Տեառն [5]առաջի հօր իմոյ. եւ
զի չարչարեցար ամենայն ուրեք ուր
27 չարչարեցաւ հայր իմ։ Եւ եհան Սողո-
մոն զԱբիաթար չլինել քահանայ Տեառն,
առ ի կատարելոյ բանին Տեառն զոր
խօսեցաւ ի վերայ տանն Հեղեայ ի Սելով։
28 Եւ լուր եհաս մինչեւ առ Յովաբ. զի
Յովաբ միացեալ էր զհետ Ադոնիայ, եւ
ոչ միաբանեցաւ զհետ [6]Սողոմոնի. եւ փախ-
եաւ Յովաբ ի խորանն Տեառն, եւ բուռն
29 եհար զեղջերաց սեղանոյն։ Եւ ազդ
եղեւ [7]Սողոմոնի եւ ասեն, թէ փախ-
եաւ Յովաբ ի խորանն Տեառն. եւ ահա
ունի զեղջերաց սեղանոյն։ [3]Եւ առաք-
եաց Սողոմոն առ Յովաբ եւ ասէ, Զի՞
եղեւ քեզ՝ զի փախեար ի սեղանն։ Եւ
ասէ Յովաբ, Զի երկեայ յերեսաց քոց,
եւ փախեայ առ Տէր"։ Եւ առաքեաց
Սողոմոն արքայ զԲանեա որդի Յովի-
դայեայ եւ ասէ, Երթ սպան զնա, [3]եւ
30 թաղեա զնա"։ Եւ չոգաւ Բանեա [3]որդի
Յովիդայեայ առ Յովաբ" ի խորանն Տեառն,
եւ ասէ ցնա, Այսպէս ասէ արքայ, Ել
այտի. եւ ասէ Յովաբ, Չելանեմ, քան-
զի աստէն մեռանիմ. եւ դարձաւ Բան-
եա [3]որդի Յովիդայեայ", եւ խօսեցաւ
ընդ արքայի եւ ասէ, Զայս ինչ խօսե-
ցաւ Յովաբ, եւ զայս ինչ ետ պատաս-
31 խանի։ Եւ ասէ ցնա արքայ, Երթ եւ
արա նմա որպէս եւ ասաց, եւ սպան
զնա եւ թաղեա զնա, եւ բարձցես այս-
օր զարիւնն զուր զոր եհեղ Յովաբ՝
32 յինէն եւ ի տանէ հօր իմոյ։ Դարձուսցէ
Տէր զարիւն [3]անիրաւութեան նորա ի
նորին գլուխ, որպէս պատահեաց եր-
կուց արանց արդարոց եւ քաջաց քան
զնա, եւ սպան զնոսա սրով, եւ հայր
իմ ոչ գիտաց [3]զարիւն նոցա", զԱբեն-
ներ որդի Ներեայ՝ զսպարապետն Իս-
րայելի, եւ զԱմեսայի որդի Յեթերայ՝
33 զսպարապետն Յուդայ։ Եւ դարձան
արիւնք նոցա ի գլուխ նորա եւ ի գլուխ
զաւակի նորա յաւիտեան. եւ Դաւթի
եւ զաւակի նորա եւ տան նորա եւ
աթոռոյ նորա եղիցի խաղաղութիւն ի
34 Տեառնէ յաւիտեան։ Եւ ել Բանեա որդի
Յովիդայեայ, եւ պատահեաց Յովաբայ
եւ սպան զնա, եւ թաղեաց զնա ի տան
35 իւրում յանապատին։ Եւ ետ արքայ
զԲանեա որդի Յովիդայեայ փոխանակ
նորա ի զօրավարութիւն. [3]եւ թագա-
ւորութիւնն ուղղէր յԵրուսաղէմ." եւ
զՍադովկ քահանայ ետ արքայ փոխանակ
Աբիաթարու [3]ի քահանայ առաջի Տեառն։
Եւ ետ Տէր Սողոմոնի հանճար եւ ի-
մաստութիւն բազում յոյժ, եւ լայնու-
թիւն սրտի իբրեւ զաւազ առ եզր ծո-
վու. եւ բազմացաւ հանճար Սողոմոնի
քան զամենայն որդւոց նախնեաց, եւ
քան զիմաստնոց Եգիպտացւոց։ Եւ առ
զդուստրն Փարաւոնի, եւ ած զնա ի
քաղաքն Դաւթի, մինչեւ ցկատարել
նորա զտունն իւր։ Եւ նախ զտունն
Տեառն եւ զպարիսպն Երուսաղեմի շուր-
ջանակի՝ զեւթն ամ արար եւ կատարեաց։
Եւ էին Սողոմոնի եւթանասուն հազար
բեռնակրաց, եւ ութսուն հազար քա-
րահատաց ի լերինն։ Եւ արար Սողոմոն
զծովն եւ զմոյթսն եւ զաւազանսն մե-
ծամեծս, եւ զխւնան եւ զջրարուխսն
սրահին եւ զծովն պղնձի։ Եւ շինեաց
զբարձաւանդակն մահարձանօք, եւ ան-
ջրպետեաց զքաղաքն Դաւթի։ Եւ ապա
զդուստրն Փարաւոնի ել ի քաղաքէն

[1] Եբր. եւ նմա, եւ Աբիաթարայ քահանայի, եւ Յովաբայ որդւոյ Շարուհեայ [2] Եբր. հաստատեաց զիս, եւ եդ նստել ինձ [3] Յեբր. պակասէ [4] Եբր. դու, եւ յաւուր յայսմիկ ոչ [5] Եբր. Եհովայի առաջի Դաւթի [6] Եբր. Աբիսողոմայ [7] Եբր. Սողոմոնի արքայի

Դաւթի ի տուն իւր զոր շինեաց նմա .
եւ ապա շինեաց զբարձաւանդակն ։ Եւ
Սողոմոն մատուցանէր երիցս ի տարւոջ
ողջակէզս եւ խաղաղականս ի վերայ
սեղանոյն զոր շինեաց Տեառն , եւ ար-
կանէր խունկս առաջի Տեառն . եւ կա-
տարեաց զտունն ։
Եւ այս են իշխանք որ կային ի վե-
րայ գործոյն Սողոմոնի . երեք հազար
եւ վեց հարեւր գործավարք ժողովըր-
դեանն, որ գործէին զգործն ։ Եւ շինեաց
զԱսուր եւ զՄակդով եւ զԱզեր եւ
զԲեթորոն վերին եւ զԲաղաաթ . բայց
յետ շինելոյն նորա զտունն Տեառն եւ
զպարիսպն Երուսաղեմի շուրջանակի՝
ապա շինեաց զքաղաքսն զայնոսիկ ։
Եւ մինչդեռ կենդանի էր Դաւիթ՝
պատուիրեաց Սողոմոնի եւ ասէ , Ահա
ընդ քեզ է Սեմէի որդի Գերեայ՝ որդի
զաւակի Յեմինայ ի Քեբրոնէ . նա անէծ
զիս անէծս ցաւագինս յաւուր յորում
գնացեալ երթայի ի Բանակս ։ Եւ նա էջ
ընդ առաջ իմ յափն Յորդանանու . եւ
երդուայ նմա ի Տէր , թէ Ոչ մեռցիս
սրով . եւ արդ մի՛ անպարտ առնիցես զնա ան-
պարտ , զի այր իմաստուն ես դու , եւ
գիտասցես զինչ առնիցես նմա . եւ ի-
ջուսցես զալիս նորա արեամբ ի դժոխս"
36 Եւ առաքեաց արքայ եւ կոչեաց զՍե-
մէի , եւ ասէ ցնա , Շինեա դու քեզ
տուն յԵրուսաղէմ , եւ նիստ անդ , եւ
37 մի՛ ուրեք ելանիցես անտի . Եւ եղիցի
յաւուր ելանելոյ քո թէ անցանիցես ընդ
հեղեղատն Կեդրոնի , գիտելով գիտա-
ջիր զի մահու մեռանիցիս , եւ արիւն
քո ի գլուխ քո եղիցի ։ [1]Եւ երդուաւ
38 նմա արքայ յաւուր յայնմիկ ։" Եւ ասէ
Սեմէի ցարքայ , Բարի է բանդ զոր խօ-
սեցար , տէր իմ արքայ , այնպէս ա-
րասցէ ծառայ քո ։ Եւ նստաւ Սեմէի
յԵրուսաղէմ [2]ամս երիս" ։
39 Եւ եղեւ յետ երից ամաց փախեան
ծառայք երկու Սեմեայ առ Անքուս որդի
Մաաքայ արքայ Գեթայ . եւ ազդ եղեւ
Սեմեայ եւ ասեն , Ահա [1]երկու ծառայք
40 քո ի Գէթ են ։ Յարեաւ Սեմէի եւ հան-
դերձեաց զէշ իւր , եւ գնաց առ Ան-
քուս խնդրել զծառայս իւր . եւ չոգաւ
Սեմէի եւ ած զծառայսն իւր ի Գեթայ ։
41 Եւ պատմեցաւ Սողոմոնի , ասեն , թէ
Չոգաւ Սեմէի յԵրուսաղեմէ ի Գէթ եւ

[1] Յեբր. զ—յ—ւ [2] Եբր. աւուրս բազումս

42 [3]դարձոյց զծառայս իւր" ։ Եւ առաքեաց
արքայ եւ կոչեաց զՍեմէի եւ ասէ ցնա .
Ո՞չ երդմնեցուցի զքեզ ի Տէր , եւ եդի
քեզ վկայութիւն եւ ասեմ , Յաւուր յո-
րում ելանիցես յԵրուսաղեմէ եւ եր-
թայցես յաջ կամ յահեակ՝ գիտելով գի-
տասջիր զի մահու մեռանիցիս . եւ ա-
սացեր ցիս , Բարի է բանդ զոր լուայ .
43 Եւ արդ զի՞րդ է զի ոչ պահեցեր զեր-
դումն Տեառն եւ զպատուէրն զոր պատ-
44 ուիրեցի քեզ ։ Եւ ասէ արքայ ցՍեմէի ,
Դու ինքնին գիտես [4]զչարութիւն քո" ,
զոր գիտէ սիրտ քո զոր արարեր ընդ
Դաւթի հօր իմում . եւ հատոյց Տէր
45 զչարիսն քո ի գլուխ քո . Եւ արքայ
Սողոմոն օրհնեալ է , եւ աթոռ Դաւթի
[5]պատրաստ առաջի Տեառն յաւիտեանս ։
46 Հրաման ետ արքայ [1]Սողոմոն Բանեայ
որդւոյ Յովիդայեայ , եւ ել սպան զնա ,
եւ մեռաւ ։[6]

ԳԼ . Գ

1 Եւ [1]ի հաստատել թագաւորութեանն
Սողոմոնի" խնամութիւն արար Սողոմոն
ընդ Փարաւոնի արքային Եգիպտացւոց ,
եւ ա՛ռ զդուստր նորա եւ ած ի քաղաք
Դաւթի , մինչեւ կատարեաց շինել զտուն
իւր եւ զտուն Տեառն եւ զպարիսպն
2 Երուսաղեմի շուրջանակի ։ Սակայն ժո-
ղովուրդն [7]արկանէին խունկս" ի վերայ
բարձանց , զի ոչ շինեցաւ տուն անուան
Տեառն մինչեւ ցաւուրսն ցայնոսիկ ։
3 Եւ սիրեաց Սողոմոն զՏէր գնալ ըստ
հրամանաց Դաւթի հօր իւրոյ , բայց ի
բարձունս եւ նա զոհէր եւ արկանէր
4 խունկս ։ Եւ յարեաւ գնաց արքայ ի
Գաբաւոն զոհել անդ , զի նա առաւել
բարձրագոյն եւ մեծ էր . հազար ողջա-
կէզ եհան Սողոմոն ի վերայ սեղանոյն
5 այնորիկ ։ Ի Գաբաւոն երեւեցաւ Տէր
Սողոմոնի ի քուն գիշերոյ , եւ ասէ Տէր
ցՍողոմոն , [8]Խնդրեա դու քեզ խնդիր
6 ինչ" ։ Եւ ասէ Սողոմոն , Դու արարեր
ողորմութիւն մեծ ընդ Դաւթի հօր ի-
մոյ , որպէս եւ շրջեցաւ առաջի քո ճըշ-
մարտութեամբ եւ արդարութեամբ եւ
ուղղութեամբ սրտի ընդ քեզ . եւ պա-

[3] Եբր. դարձաւ [4] Եբր. զամենայն չարութիւն
[5] Եբր. եղիցի հաստատուն [6] Եբր—յեւյն յ—ե—,
Եւ թագաւորութիւնն հաստատեցաւ ի ձեռս
Սողոմոնի ։ [7] Եբր. զոհէր [8] Եբր. Խնդրեա ինչ ,
տաց քեզ

հեցեր նմա զողորմութիւնս զայս մեծ՝
տալ որդւոյ նորա նստել յաթոռ նորա
7 որպէս եւ յաւուր յայսմիկ։ Եւ արդ,
Տէր Աստուած իմ, դու ¹նստուցեր զծառայ
քո փոխանակ Դաւթի հօր իմոյ, եւ ես
եմ մանուկ փոքր եւ ոչ գիտեմ զել եւ
8 զմուտ իմ. Եւ ծառայ քո ի մէջ ժողո-
վրդեան քո է զոր ընտրեցեր ժողո-
վուրդ քո՛ բազում, անթիւ եւ անհա-
9 մար ի բազմութենէ։ Եւ տացես ծառայի
քում սիրտ լսելոյ եւ դատելոյ զժողո-
վուրդ քո արդարութեամբ, խելամուտ
լինել ի մէջ բարւոյ եւ չարի. քանզի ո՞
կարիցէ դատել զայս ժողովուրդ քո
10 զծանր։ Եւ հաճոյ թուեցաւ բանն ա-
ռաջի Տեառն, զի խնդրեաց Սողոմոն
11 զայն բան։ Եւ ասէ ցնա ²Տէր, Փոխա-
նակ զի խնդրեցեր յինէն զբանդ զայդ, եւ
ոչ խնդրեցեր քեզ աւուրս բազումս, եւ
ոչ խնդրեցեր քեզ մեծութիւն, եւ ոչ
խնդրեցեր զանձինս թշնամեաց քոց,
այլ խնդրեցեր դու քեզ խելամուտ լի-
12 նել լսելոյ զիրաւունս, Ահա արարի ըստ
բանից քում, ահա ետու քեզ սիրտ ի-
մաստուն եւ հանճարեղ. իբրեւ զքեզ
ոչ ոք եղեւ յառաջ քան զքեզ, եւ յետ
13 քո ոչ ոք յարիցէ նմանօղ քեզ։ Եւ զոր
ոչն եւս խնդրեցեր՝ ետու քեզ, զմեծու-
թիւն եւ զփառս, որպէս ոչ ոք եղեւ
նման քեզ ի թագաւորս զամենայն աւուրս
14 քո։ Եւ եթէ գնասցես ի ճանապարհս
իմ պահել զհրամանս իմ եւ զպատուի-
րանս իմ որպէս եւ գնաց Դաւիթ հայր
15 քո, եւ բազմացուցից զաւուրս քո։ Եւ
զարթեաւ Սողոմոն եւ ահա երազ էր.
եւ յարեաւ եկն յԵրուսաղէմ, եւ եկաց
առաջի սեղանոյն յանդիման տապանակի
ուխտին Տեառն ³ի Սիոն. եւ մատոյց
ողջակէզս եւ արար խաղաղականս, եւ
արար խրախութիւն մեծ ³իւր եւ" ա-
մենայն ծառայից իւրոց։
16 Յայնժամ երեւեցան երկու կանայք
պոռնիկք՝ արքայի, եւ կային առաջի
17 նորա։ Եւ ասէ մի կինն, Յիս տէր իմ.
ես եւ կինս այս էաք ի միում տան,
18 եւ ծնայ⁴ ի տանն. Եւ եղեւ յաւուրն
երրորդի⁵ ծնաւ եւ կինս այս. եւ մեք
առանձինն էաք, եւ ոչ ոք գոյր ընդ
մեզ ի տանն՝ բաց ի մէնջ երկոցունց ի
19 տանն։ Եւ մեռաւ որդի սորա ի գիշերի,
20 քանզի ննջեաց ի վերայ նորա. Եւ յար-
եաւ ի հասարակ գիշերի, եւ առ զմա-
նուկն իմ ի գրկաց իմոց. եւ աղախին
քո ի քուն էր. եւ ննջեցոյց զնա ի ծոց
իւրում. եւ զորդին իւր զմեռեալն ննջե-
21 ցոյց ի ծոց իմում։ Եւ յարեայ ընդ ա-
ռաւօտն դիեցուցանել զորդին իմ, եւ
նա էր մեռեալ. եւ հայեցայ ընդ նա
այգուն, եւ ահա չէր որդին իմ զոր
22 ծնայ։ Եւ ասէ միւս կինն, Ոչ. այլ որդի
քո է մեռեալն, եւ որդի իմ կենդանին։
Եւ միւսն եւս ասէր, Այլ որդի իմ կեն-
դանին, եւ որդի քո մեռեալն. եւ խօսեցան
23 առաջի արքայի։ Եւ ⁶ասէ ցնոսա ար-
քայ, Դու ասես թէ" Այս որդի իմ է որ
կենդանիս է, եւ որդի դորա մեռեալն.
եւ ⁷դու ասես", Ոչ. այլ որդին քո մեռ-
24 եալն, եւ որդին իմ կենդանին։ Եւ ա-
սէ արքայ, Առէք առ իս զսուրն. եւ բե-
25 րին զսուրն առաջի արքայի։ Եւ ասէ
արքայ, Կտրեցէք զմանուկն ³զստնդիաց
զկենդանին՝ յերկուս, եւ տուք զկէսն
26 նորա դմա, եւ զկէսն նորա նմա։ Եւ
պատասխանի ետ կինն որոյ որդին կեն-
դանի էր, եւ ասէ ցարքայ, քանզի խռո-
վեցան աղիք նորա ի վերայ որդւոյն
իւրոյ, եւ ասէ, Յիս տէր, տուք նմա
զմանուկն կենդանի, եւ մահու մի՛
սպանանէք զնա։ Եւ միւսն ասէր, Մի՛
իմ լիցի եւ մի՛ դորա, կտրեցէք ընդ
27 մէջ։ Պատասխանի ետ արքայ եւ ասէ,
Տուք դմա զմանուկն կենդանի, ³որ ա-
սաց թէ Տուք զդա նմա" եւ մահու մի՛
28 սպանանէք զդա. Նա է մայր դորա։ Եւ
լուաւ ամենայն Իսրայէլ զդատաստանն
զոր դատեցաւ արքայ, եւ զահի հարան
յերեսաց արքայի. զի տեսին թէ իմաս-
տութիւն Աստուծոյ է ի նմա առնել
իրաւունս։

## Գլ. Դ

1 Եւ էր արքայ Սողոմոն թագաւորեալ
2 ի վերայ ⁸Իսրայելի։ Եւ այս էին իշխանք
նորա. Ազարիա որդի Սադովկայ՝ քա-
3 հանայ, Եղիարեփ եւ Աքիա որդիք Սի-
սայ՝ դպիրք, եւ Յովսափատ որդի Աքի-
4 ղիդայ՝ ի վերայ յիշատակաց, Եւ Բանեա
որդի Յովիդայեայ՝ ի վերայ զօրաց, եւ
5 Սադովկ եւ Աբիաթար՝ քահանայք, Եւ

---

[1] Եբր. թագաւորեցուցեր [2] Եբր. Աստուած
[3] Յեբր. պակաս [4] Եբր—յեւյեն յ—եւ—, առ. նմա
[5] Եբր—յեւյեն յ—եւ—, ծնանելոյ իմոյ

[6] Եբր. ասէ արքայ, Սա ասէ, [7] Եբր. սա ասէ
[8] Եբր. ամենայն Իսրայելի

Ազարիա որդի Նաթանայ՝ ի վերայ գոր-
ծավարաց, եւ Զաբութ որդի Նաթա-
6 նայ՝ [1]քահանայ բարեկամ արքայի, Եւ
Աքիսար էր հրամանատար, [2]եւ Եղիակ՝
հազարապետ, եւ Եղիաբ որդի Սափայ՝
չահապ," եւ Ադոնիրամ որդի Աբդոնայ՝
7 ի վերայ հարկաց։ Եւ էին Սողոմոնի
երկոտասան գործակալք ի վերայ ամե-
նայն Իսրայելի, տալ ռոճիկ արքայի եւ
8 տան նորա մէն մի ամիս ի տարւոջ։ Եւ
այս են անուանք նոցա [3]Բէէն որդի Ովր-
9 րայ" ի լերինն Եփրեմի. [2]Մի որդի Դա-
կարայ՝ ի Մաքմաս եւ ի Սաղաբիմ եւ
ի Բեթսամիւս եւ յԱյիլոմ մինչեւ ցԲե-
10 թանան. Որդի Եսդայ՝ յԱրաբովթն, նորա
Սոքով եւ ամենայն երկիրն Ոփերայ.
11 Որդի Աբինադաբայ ամենայն Նեփա-
դովր, որոյ Տափաթ դուստր Սողոմոնի՝
12 էր նորա կնութեան. Բաանա՝ որդի Ա-
քեղովթայ, [4]զԹանաք եւ զՄաքդով եւ
զամենայն տունն Սանայ, որ առ Եզ-
սարթանաւ", ի ներքոյ Եզրայելի, եւ ի
Բեթսանայ մինչեւ ցԱբէլմաուլա, եւ
13 մինչեւ [5]ցՄամբրադա. Եկմաադ որդի"
Գաբերայ՝ յՌամովթ Գաղաադ, նորա
Աւիովթ Յայիրայ որդւոյ Մանասէի ի
Գաղաադ, նորա վիճակն Արգոբ որ ի
Բասան. վաթսուն քաղաքք մեծամեծք
14 պարսպաւորք պղնձանիգք. Աքինադար
15 որդի Ադդովայ՝ ի Մայենեմ. Աքիմաս՝ ի
Նեփթաղիմ. սա առ զՄասեմաթ դուստր
16 Սողոմոնի կնութեան. Բաանաս որդի
17 Քուսեայ՝ յԱսեր եւ ի Բաաղովթ. Յով-
18 սափատ որդի Փարուայ՝ յԻսաքար. Սե-
19 մէի որդի Եղայ՝ ի Բենիամին. Գաբեր որդի
Արայի՝ յերկրին Գաղաադու, յերկրին
Սեհոնի արքայի Ամովրհացւոց եւ Ովգայ
արքայի Բասանու. [6]Նասիփ յերկրին"։
20 Յուդա եւ Իսրայէլ բազում էր իբ-
րեւ զաւազ առ եզր ծովու բազմու-
թեամբ. ուտէին եւ ըմպէին եւ ուրախ
21 լինէին։ Եւ Սողոմոն իշխան էր [7]թա-
գաւորութեանց՝ ի գետոյ երկրին այլազգ-
եաց" մինչեւ ի սահմանս Եգիպտոսի.
բերէին պատարագս եւ ծառայէին Սո-
ղոմոնի զամենայն աւուրս կենաց նորա։

22 Եւ այս ռոճիկք էին Սողոմոնի ի միում
աւուր. երեսուն քոռ նաշհոյ, եւ [8]քա-
23 ռասուն քոռ ալեր գերմակոյ, Եւ տասն
եզն ընտիր, եւ քսան կով արօտական,
եւ հարեւր ոչխար. թող զեղջերու եւ
զայծեամն եւ զընտիր ընտիր հաւուց
24 պարարելոց։ Զի էր իշխան ամենայնի
յայնկոյս գետոյն՝ ի Թափսայ մինչեւ
ցԳազա, ամենայն թագաւորութեանց
յայնմ կողմանէ գետոյն. եւ էր նմա
խաղաղութիւն յամենայն կողմանց չուր-
25 ջանակի։ Եւ բնակեալ էր Յուդա եւ
Իսրայէլ վստահութեամբ, իւրաքանչիւր
ոք ընդ որթով իւրով եւ ընդ թզենեաւ
իւրով [2]ուտէին եւ ըմպէին" ի Դանայ
մինչեւ ցԲերսաբէէ զամենայն աւուրս
Սողոմոնի։
26 Եւ էին Սողոմոնի քառասուն հազար
[9]մատակ ձիոց ի կառս, եւ երկոտասան
27 հազար [10]երիվարաց։ Եւ տային [11]այնպէս
ռոճիկ գործակալքն արքայի Սողոմոնի,
եւ զամենայն հրամանս սեղանոյն ար-
քայի" զիւրաքանչիւր ամիս, եւ ոչ
28 սխալէին բան մի։ Նոյնպէս եւ զգարին
եւ զյարդն [12]երիվարացն եւ կառամարացն"
բերէին ի տեղին ուր [13]էր արքայ" իւրա-
քանչիւր ոք ըստ սակի իւրում։
29 Եւ ետ [14]Տէր իմաստութիւն Սողո-
մոնի եւ հանճար բազում յոյժ, եւ զե-
ղումն սրտի իբրեւ զաւազ առ եզեր ծո-
30 վու։ Եւ բազմացաւ իմաստութիւնն
Սողոմոնի յոյժ քան զհանճար ամենայն
[15]նախնեաց մարդկան" եւ քան զամե-
31 նայն իմաստնոց Եգիպտոսի։ Եւ իմաստ-
նացաւ քան զամենայն մարդիկ, [16]եւ
իմաստնացաւ քան զԳեթան Զարացի",
եւ զԵման, եւ զՔաղքադ եւ զԴարդան
որդիս Մաւուղայ. եւ էր անուանի յամե-
32 նայն ազգս չուրջանակի։ Եւ խօսեցաւ
Սողոմոն երիս հազարս առակս. եւ էին
33 օրհնութիւնք նորա [17]հինգ հազար"։ Եւ
խօսեցաւ զփայտից՝ զեղեւնափայտէն
որ ի Լիբանան, մինչեւ ցզոպայն որ
յորմն ելանէ. եւ խօսեցաւ զանասնոց
34 եւ զթռչնոց եւ [18]զձկանց։ Եւ գային

[1] Կամ, Նախարար. [2] Եբր. գաւառ [3] Եբր. Բենովր [4] Եբր. ի Թանաք եւ ի Մակդով եւ յամենայն տանն Սանայ որ առ Սարթանայ [5] Եբր. յայնկոյս Յեկմաամայ։ (13) Որդի [6] Եբր. և մի գործակալ յերկրին [7] Եբր. ամենայն թագաւորութեանց ի Գետոյն մինչեւ յերկիրն Փղշտացւոց, եւ

[8] Եբր. վաթսուն [9] Եբր. ասպաստանք [10] Եբր. հեծելոց [11] Եբր. ռոճիկ գործակալքն այնոքիկ արքային Սողոմոնի և ամենեցուն որ մերձենային ի սեղանն արքային Սողոմոնի [12] Եբր. ձիոց եւ երիվարաց [13] Եբր. էին՝ [14] Եբր. Աստուած [15] Եբր. որդւոց արեւելից [16] Եբր. քան զԵթան Եզրահացի, [17] Եբր. հազար եւ հինգ [18] Եբր. զզեռնոց եւ զձկանց

[1]ամենայն ազգք՝՝ լսել զիմաստութիւնն
Սողոմոնի, յամենայն թագաւորաց երկ-
րի՛ որ լսէին զիմաստութիւն նորա։

## Գլ. Ե

1 Եւ առաքեաց Քիրամ արքայ Տիւրոսի
զծառայս իւր առ Սողոմոն. քանզի լուաւ
թէ զնա օծին ի թագաւոր փոխանակ
Դաւթի հօր իւրոյ. զի սիրէր Քիրամ
2 զԴաւիթ զամենայն աւուրս։ Եւ առաք-
3 եաց Սողոմոն առ Քիրամ եւ ասէ, Դու
ինքնին գիտես զԴաւիթ զհայր իմ, զի
ոչ կարաց շինել տուն անուան Տեառն
Աստուծոյ [2]իմոյ յերեսաց պատերազ-
մաց որ շուրջ էին զնովաւ, մինչեւ տայ
4 Տէրն զնոսա ընդ ոտիւք նորա։ Եւ արդ
ցածոյց Տէր Աստուած իմ շուրջ զինեւ,
եւ ոչ գոյ մնասակար եւ ոչ պատահար
5 չար։ Եւ ահա ես ասեմ շինել տուն
անուան Տեառն Աստուծոյ իմոյ, որպէս
խօսեցաւ Տէր [3]Աստուած ընդ Դաւթի
հօր իմում եւ ասէ, Որդի քո զոր տաց
փոխանակ քո յաթոռ քո՛ նա շինեսցէ
6 տուն անուան իմոյ։ Եւ արդ հրամա՛ն
տուր, եւ հարցեն ինձ [4]փայտ ի Լիբա-
նանէ. եւ ահա ծառայք իմ եղիցին ընդ
ծառայս քո. եւ զվարձս [5]ծառայու-
թեան քո՝՝ տաց քեզ ըստ ամենայնի զոր
եւ ասասցես. զի դու ինքնին գիտես,
զի ոչ գոյ մեր այր որ գիտէ հարկանել
փայտ իբրեւ զՍիդոնացիս։
7 Եւ եղեւ իբրեւ լուաւ Քիրամ զբանս
Սողոմոնի՛ ուրախ եղեւ յոյժ եւ ասէ,
Օրհնեալ է Տէր [3]Աստուած այսօր, որ
ետ որդի իմաստուն Դաւթի ի վերայ
8 բազում ժողովրդեանն այնորիկ։ Եւ ա-
ռաքեաց Քիրամ առ Սողոմոն եւ ասէ,
Լուայ վասն ամենայնի զոր առաքե-
ցեր առ իս. ես արարից զամենայն
զկամս [6]քո. եղեւնափայտ եւ մայր՝՝
9 իջուսցեն ծառայք իմ ի Լիբանանէ ի
ծով, եւ ես արարից զնոսա լաստս ի
ծովու մինչեւ ցտեղի յոր առաքեսցես
առ իս, եւ [7]հանից յեզր՝՝ եւ դու առ-
ցես, եւ արասցես զկամս իմ տալ հաց
10 տան իմոյ։ Եւ տայր Քիրամ Սողոմոնի
եղեւնափայտս եւ մայրս, զամենայն
11 զկամս նորա։ Եւ Սողոմոն տայր Քի-
րամայ քսան հազար քոռ [8]ցորենոյ եւ
քսան հազար սափոր իւղոյ՝՝ մզելոյ, զոր
տայր Սողոմոն Քիրամայ [9]ի տարւոջ
12 Եւ ետ Տէր իմաստութիւն Սողոմոնի,
որպէս եւ խօսեցաւ ընդ նմա. եւ էր
խաղաղութիւն ի մէջ Քիրամայ եւ ի
մէջ Սողոմոնի, եւ ուխտեցին ուխտ ի
մէջ իւրեանց։
13 Եւ արկ արքայ Սողոմոն մարդահարկ
յամենայն Իսրայէլ, եւ էր հարկն երե-
14 սուն հազար արանց։ Եւ առաքէր զնո-
սա ի Լիբանան տասն հազար յամսեան,
փոխանակաւ կային ամիս մի ի Լիբա-
նան եւ երկուս ամիսս ի տունս իւր-
եանց. եւ Ադոնիրամ ի վերայ հարկին։
15 Եւ էին Սողոմոնի եւթանասուն հազար
բեռնակրաց եւ ութսուն հազար [10]քա-
16 րահատաց ի լերինն, թող զիշխանս
կացուցեալս Սողոմոնի ի վերայ գործոյն,
երեք հազարք եւ [11]հինգ հարիւր, ի վե-
րայ ժողովրդեանն որ գործէին զգործն։
17 Եւ հրաման ետ արքայ եւ բերին վէմս
մեծամեծս, քարինս պատուականս ի
18 հիմն տանն, եւ քարինս [12]անտաշս։ Եւ
տաշեցին [13]որդիքն Սողոմոնի եւ [13]որդիքն
Քիրամայ եւ [14]Բիբղացիքն. եւ պատ-
րաստեցին զփայտն եւ զքար[3]զերիս ամս՝՝
շինել զտունն։

## Գլ. Զ

1 Եւ եղեւ յամին չորեքհարիւրորդի եւ
[15]քառասներորդի ելանելոյ որդւոցն Իս-
րայէլի յԵգիպտոսէ, յամին չորրորդի
[16]ամսեանն երկրորդի՝՝ թագաւորելոյ ար-
քայի Սողոմոնի ի վերայ Իսրայէլի՛ շի-
նէր զտունն Տեառն։
2 Եւ տունն զոր շինեաց արքայ Սողո-
մոն Տեառն՛ վաթսուն կանգուն երկայ-
նութիւն նորա, եւ քսան կանգուն լայ-
նութիւն նորա, եւ [17]քսան կանգուն
3 բարձրութիւն նորա։ Եւ կամարակապ
առաջի [18]տաճարին, ի քսան կանգնոյ երկայ-

---

[1]Եբր. յամենայն ազգաց [2]Եբր. իւրոյ [3]ՅԵբր. դ–յ––է [4]Եբր. եղեւին [5]Եբր. ծառայից քոց [6]Եբր. քո զեղեւնափայտից եւ զմայր փայտից։ [7]Եբր. քակեցից զնոսա անդ

[8]Եբր. ցորենոյ ի կերակուր տան նորա եւ քսան քոռ իւղոյ [9]Եբր. ամ ըստ ամէ [10]Եբր. հատանողաց [11]Եբր. երեք [12]Եբր. կոփածոյս [13]Եբր. շինողք [14]Եբր. Գեբաղացիքն [15]Եբր. ութսներորդի [16]Եբր. յամսեանն Զիւ որ է ամիս երկրորդ. [17]Եբր. երեսուն [18]Եբր. տաճարի տանն

նութիւն նորա՝ հանդէպ [1]բարձրութեան
տանն, եւ ի տասն կանգնոյ լայնութիւն
նորա՝ առաջի երեսաց տանն. [2]եւ շինե-
4 աց զտաճարն եւ կատարեաց զնա" Եւ
արար տանն պատուհանս հայեցիկս ծա-
5 ծուկս: Եւ ած զորմովք տանն [3]պա-
տուարս շուրջանակի՝ առ որմովք տանն
շուրջանակի տաճարին եւ դաբիրայն.
եւ արար [4]կողմանցս շուրջանակի:
6 Կողմանցյն ներքնոյ՝ ի հինգ կանգնոյ
լայնութիւն նորա, եւ միջնոյն՝ ի վեց
կանգնոյ լայնութիւն, եւ երրորդին՝ յեւթն
կանգնոյ լայնութիւն նորա. քանզի ան-
ջրպետութիւն եդ տանն շուրջանակի
արտաքուստ կողմանէ տանն, զի մի
7 հարկանիցին ընդ որմս տանն: Եւ ի շի-
նել տանն [5]ապառաժ եւ անգործ քա-
րամբք շինեցաւ, եւ մուրճ եւ ամե-
նայն ինչ" երկաթի ոչ հնչեաց ի շինել
8 նորա: Եւ դուռն [6]կողմանցյն ի ներ-
քոյ աջոյ" ուսոյ տանն, եւ ելանէին
շուրջանակաւ՝ ի միջինն, եւ ի միջնոյն՝
9 յերրորդ յարկն: Եւ շինեաց զտաճարն եւ
կատարեաց զնա, եւ դրուագեաց զտաճարն
տախտակամածօք պահանգօք եւ յօրին-
10 ուածովք եղեւնափայտից: Եւ շինեաց
[7]զկողակս ամենայն տանն", ի հինգ
կանգնոյ բարձրութիւն նոցա, եւ պատ-
եաց [8]զկողակսն եղեւնափայտիւ:
11 Եւ եղեւ բան Տեառն առ Սողոմոն
12 եւ ասէ, Զտունդ զոր շինեսդու, եթէ
ըստ հրամանաց իմոց գնասցես եւ զի-
րաւունս իմ արասցես եւ պահեսցես զա-
մենայն պատուիրանս իմ գալ նոքօք,
հաստատեցից զբան իմ ընդ քեզ՝ զոր
13 խօսեցայ ընդ Դաւթի հօր քո. Եւ բնա-
կեցայց ի մէջ որդւոցն Իսրայէլի, եւ
ոչ թողից զժողովուրդ իմ զԻսրայէլ:
14 Եւ շինեաց Սողոմոն զտաճարն եւ կա-
15 տարեաց զնա: Եւ շինեաց զորմս տանն
ի ներքուստ յեղեւնափայտից, ի յատակէ
տանն մինչեւ [9]յորմն եւ մինչեւ ցգե-
րանն, եւ" պատեաց շուրջանակի փայ-
տիւ ի ներքուստ, եւ դրուագեաց [10]ի
ներքոյ տանն կողմանցօք" մայրիւք:
16 Եւ շինեաց քսան կանգուն [11]ի ծագէ որ-
մոյն զմի կողմանցն" ի յատակէ տանն
մինչեւ ցհեծանսն. եւ արար ի ներքոյ
կողմանէ նորա [12]զդաբիրն ի սրբութեան"
17 սրբութեանցն: Ի քառասուն կանգնոյ
18 էր տաճարն,[13]առաջոյն ներքին": Եւ դրուագ-
եաց զտաճարն ի ներքոյ եղեւնափայտիւք
[14]զկամարան եւ զկողակս, եւ զզրո-
շուածս" զամենայն յեղեւնափայտից, եւ
19 ոչ երեւէր քար. [15]Հանդէպ դաբիրայն"
ի մէջ տանն ի ներքուստ կողմանէ
պատրաստեաց, դնել անդ զտապանակ
20 ուխտին Տեառն: Եւ հանդէպ դաբիրայն
քսան կանգուն յերկայնութիւն եւ քսան
կանգուն ի լայնութիւն, եւ քսան կան-
գուն ի բարձրութիւն նորա. եւ դրուագ-
եաց զնա ոսկւով ձուլով. եւ [16]արար
21 սեղան եղեւնափայտեայ": Եւ դրուագ-
եաց Սողոմոն զտունն ի ներքուստ ոսկ-
ւով զտով. եւ [17]հաստատեաց ոսկի
բեւեռօք" հանդէպ դաբիրայն՝ եւ պատ-
22 եաց զնա ոսկւով: Եւ զամենայն տունն
[18]ած ոսկւով մինչեւ ի սպառ ամենայն
տանն. եւ [19]ամենայն ներքին կողման
դաբիրայն՝ արար թիթղունս ոսկիս":
23 Եւ արար ի ներքս ի դաբիրն երկուս
քերովբէս ի փայտից [20]նոճից, ի տասն
24 կանգնոյ մեծութիւն միոյն՝ կշռով": Եւ
ի հինգ կանգնոյ թեւ մի նորա, եւ ի
հինգ կանգնոյ թեւն երկրորդ. տասն
կանգուն թեւէ ի թեւ թեւոց նորա:
25 Նոյնպէս եւ երկրորդի քերովբէին, միով
չափով միաբանութիւն քերովբէիցն:
26 Եւ բարձրութիւն միոյ քերովբէի ի տասն
կանգնոյ, նոյնպէս եւ երկրորդի քերով-
27 բէին: Եւ եդ զերկոսին քերովբէսն ի մէջ
տանն ներքնոյ, եւ տարածեաց զթեւս
նոցա. եւ հասանէր թեւ միոյն յորմն,
եւ հասանէր թեւ քերովբէին երկրորդի՝
յորմն երկրորդ. եւ թեւք նոցա ի մէջ
28 տանն հասանէին թեւէ ի թեւ. Եւ
պատեաց զքերովբէսն ոսկւով:
29 Եւ զամենայն որմս տանն շուրջա-

[1] Եբր. լայնութեան [2] Յեբր. պակսի [3] Ասորն. կողմանցս կամ յարկս [4] Եբր. սենեակս [5] Եբր. շինեցաւ քարամբք կոփելովք ի քարահատն. մուրճ և տապար. ամենայն գործի [6] Եբր. կողմանցին միջնոյ՝ յաջոյ [7] Եբր. կողմանց զամենայն զտաճարն [8] Եբր. զտաճարն [9] Եբր. ցորմն ձեղուան [10] Եբր. զյատակ տանն տախտակամածօք

[11] Եբր. զյետուստ տանն տախտակամածօք յեղեւնափայտից [12] Եբր. զդաբիրն, զսրբութիւնն [13] Եբր. այսինքն տաճարն որ առաջի (դաբիրայ) [14] Եբր. գնդակօք և ծաղկօք փթթելովք [15] Եբր. Եւ զդաբիրն [16] Եբր. դրուագեաց զսեղանն եղեւնափայտիւ [17] Եբր. անցոյց զվարագոյրն ի շղթայս ոսկիս [18] Եբր. դրուագեաց [19] Եբր. զամենայն սեղանն հանդէպ դաբիրայ դրուագեաց ոսկւով [20] Եբր. ձիթոյ, ի տասն կանգնոյ բարձրութիւն նորա

նակի քանդակեալ գրեաց գրչաւ քերովբէս
եւ արմաւենիս, եւ [1]գրօշուածս հայելիս"
30 ի ներքսագոյնն եւ յարտաքինն ։ Եւ զյա-
տակ տանն զրուագեաց ոսկւով ներքի-
նոյն եւ զարտաքնոյն ։
31 Եւ դրաց դաւիթայն արար [2]դուրս
ի փայտից [3]գլոց, եւ սեամս հնգեկինս ։
32 Եւ երկուս դուրս ի փայտից մայրից, եւ
քանդակս ի նոցանէ մածուցեալս քերովբէս
եւ արմաւենիս եւ թիթղունս թաւաց-
եալս", եւ պատեաց ոսկւով, եւ իջա-
նէր ի վերայ քերովբէիցն եւ արմաւենե-
ացն ոսկին ։
33 Այնպէս արար դրաց տաճարին սեամս
34 ի փայտից [4]գլոց չորեքկինս . Եւ երկո-
ցունց դրանցն փայտս մայրս, երկփա-
ցիկս, մի մի դուռն, եւ ծխնիք նոցա
35 երկփացիկք ։ Եւ դուռն երկրորդ շրջա-
նակաւ՝ գրօշեալ" ի նմա քերովբէս եւ ար-
մաւենիս, եւ [5]թռուցեալ թիթղունս,
եւ պատեալ" ոսկւով իջելով ի վերայ
յօրինուածոյն ։
36 Եւ շինեաց [6]զսրահն ներքին երեք-
կարգեան [7]յանտաշից, եւ պարիսպ գործ-
եալ յեղեւնափայտից" ։
37 Յամին չորրորդի արկ հիմն տանն
Տեառն, յամսեանն Զիու՝ [8]յերկրորդում
38 ամսեանն ." Եւ յամին մետասաներորդի՝
յամսեանն ի Բուլ, այն է ամիսն ութե-
րորդ, կատարեցաւ տունն ըստ ամե-
նայն բանի նորա, եւ ըստ ամենայն
յօրինուածոյն իւրոյ . եւ շինեաց զնա
զեւթն ամ ։

## Գլ. Է

1 Եւ զիւր տունն շինեաց Սողոմոն զե-
րեքտասան ամ, եւ կատարեաց զամե-
նայն զտունն իւր ։
2 Եւ շինեաց զտունն անտառին Լիբա-
նանու՝ հարեւր կանգուն երկայնութիւն
եւ յիսուն կանգուն լայնութիւն նորա,
եւ երեսուն կանգուն բարձրութիւն նո-
րա, [9]եւ երից" կարգաց սեանցն եղեւ-
նափայտից, եւ [10]ուսք եղեւնեայք ի վե-
3 րայ սեանցն . Եւ [11]էյարկ զտունն ի
վերայ կողմանցայ սեանցն". եւ թիւ
սեանցն քառասուն եւ հինգ, եւ հնգե-
4 տասան կարգ ։ Եւ [12]պատուարք երեք,
եւ անջրպետք առ անջրպետօք" երեք-
5 կին ։ Եւ ամենայն դրունք եւ ամենայն
[13]անջրպետք չորեքկուսիք [14]պատուա-
րաւորք, եւ ի դրանէ ի դուռն" երեքկին ։
6 Եւ [15]զկամար սեանցն" արար յիսուն
կանգուն յերկայնութիւն եւ երեսուն ի
լայնութիւն, զօդեալ կամարքն հան-
դէպ միմեանց, եւ սիւնքն եւ խարիսխք
7 ի գլխոց կողմանէ կամարացն ։ Եւ զկա-
մար աթոռոյն ուր դատէր [16]ի կամարի
սանեկին՝ արար, եւ յարկ" եղեւնափայ-
տիւք ի յատակէ մինչեւ [17]ցյատակ ։
8 Եւ տան նորա յորում նստիցի՝ սրահ
մի կամարակապ ըստ նմին գործոյ . եւ
[18]տուն դստերն Փարաւոնի զոր ա՛ռ Սո-
ղոմոն՝ ըստ նմին օրինակի կամարակապ ։
9 Ամենայն ի քարանց պատուականաց,
չափով [19]յանկոփից կցեալ ընդ միմեանս
յերկարաւոր" ի ներքոյ եւ արտաքոյ, ի
հիմանէ մինչեւ [20]ցաստառակն . եւ ար-
10 տաքուստ ի սրահին մեծի" Հաստատեալ
քարամբք մեծամեծօք տասնկանգնէիւք
11 եւ ութկանգնէիւք, Եւ ի վերուստ կողմա-
նէ քարամբք պատուականօք ըստ նմին
չափոյ [21]անտաշիւք, եւ եղեւնափայտիւք ։
12 [6]Զսրահն մեծ շուրջանակի երեքկար-
գեանս [22]յանտաշից, եւ կարգ մի [23]մա-
ծուցեալ եղեւնափայտիւ ։ Եւ շինեաց
զսրահ տանն Տեառն՝ զներքին կամարաց
տանն Տեառն հանդէպ տաճարին" ։
13 Եւ առաքեաց արքայ Սողոմոն, եւ
14 առ զԽիրամ ի Տիւրոսէ, Որդի կնոջ
այրւոյ, եւ նա էր ի ցեղէն Նեփթաղի-

[1]Եբր. ծաղիկս փթթեալս [2]Եբր. փեղկս [3]Եբր. ձիթենի. Հանդերձ դրանդեօք հնգերորդ մասն որմոյն ։ (32) Այսպէս երկուս փեղկս ի փայտից ձիթենւոյ. եւ քանդակեաց ի նոսա քանդակս քերովբէս եւ արմաւենիս եւ ծաղիկս փթթեալս [4]Եբր. ձիթենւոյ. չորրորդ մասն որմոյն։ (34) Եւ փեղկքն երկոքին ի մայր փայտէ. երկու կողք միոյ փեղկին ծալածոյ, եւ երկու կողք միւսոյ փեղկին՝ ծալածոյ ։ (35) Եւ դրօշեաց [5]Եբր. ծաղիկս փթթեալս, եւ պատեաց [6]Եբր. զգաւիթն [7]Եբր. ի քարինս կոփածոյս, եւ մի կարգի գերան եղեւնափայտեայ [8]Յեբր. պակաս

[9]Եբր. ի վերայ չորից [10]Եբր. հեծանք [11]Եբր. ծածկեաց եղեւնափայտիւք ի վերուստ զսենեակսն որ ի վերայ սեանց [12]Եբր. լուսամուտք երեքկին, և պատուհան առ պատուհան [13]Եբր. դրանդիք [14]Եբր. ի տեսանել, եւ պատուհան առ պատուհան [15]Եբր. զսրահն կամարակապ, [illegible] [16]Եբր. արար ի կամար (սրահ), ատենի եւ ծածկեաց [17]Այսինքն, ցձեղուն [18]Եբր. արար տուն [19]Եբր. ի կոփածոյից աղօրեալ աղօրիւք [20]Եբր. ցառաստաղն, եւ արտաքուստ մինչեւ ի գաւիթն մեծ . [21]Եբր. կոփելովք [22]Եբր. ի քարանց կոփելոց [23]Եբր. հեծանօք եղեւնափայտիւք, նոյնպէս եւ գաւիթ տանն Տեառն ներքին, որպէս եւ սրահ տանն

մայ, եւ հայր նորա այր Տիւրացի. ճար-
տարապետ պղնձոյ եւ լի արուեստիւ
եւ իմաստութեամբ եւ գիտութեամբ՝
գործել զամենայն գործ պղնձոյ. եւ ե-
մուտ առ արքայ Սողոմոն, եւ արար
15 զամենայն զգործն։ Եւ ձուլեաց զերկո-
սին սիւնսն [1]կամարի տանն", ութ եւ
տասն կանգուն բարձրութիւն [2]սեանն,
եւ շուրջ զնովաւ չափ [3]չորեքտասան
կանգուն շուրջանակի [4]թանձրութիւն
սեանն, եւ ի չորից մատանց մատնէքն".
16 նոյնպէս եւ երկրորդ սիւնն։ Եւ երկուս
խոյակս արար տալ ի վերայ գլխոյ սեանցն
ձոյլ պղնձիս. հինգ կանգուն բարձ-
րութիւն միոյ խոյակին, եւ հինգ կան-
գուն բարձրութիւն երկրորդ խոյակին։
17 [5]Եւ արար երկուս վանդակս ծածկել
զխոյակն, եւ արար երկուս եւս վան-
դակս ծածկել զերկրորդ խոյակն, գործ
18 կախաղանաւ. Եւ երկոցունց սեանցն
նռնաձեւս պղնձիս ի վանդակապատսն,
գործ կախաղանաւ, կարգ առ կարգ.
19 եւ այնպէս արար երկրորդի խոյակին ի
վերայ գլխոյ սեանցն", գործ շուշանա-
գործ [4]առ կամարաւ" ի չորից կանգնոց։
20 [6]Եւ պատուար ի վերայ երկոցունց
սեանցն ի վերուստ ի կողմանցայց խոյա-
կին պատուար, եւ նռնաձեւացն եր-
կերիւր կարգ" շուրջ զերկրորդիւ խոյա-
21 կաւն։ Եւ կանգնեաց զսիւնս [7]կամարի
տաճարին, եւ կանգնեաց [8]զմի սիւնն,
եւ կոչեաց զանուն նորա [9]Յաքում. եւ
կանգնեաց զսիւնն [10]երկրորդ, եւ կոչ-
22 եաց զանուն նորա [11]Բոոզ։ Եւ ի վերայ
գլխոյ սեանցն՝ գործ շուշանագործ. եւ
կատարեցաւ գործ սեանցն։
23 Եւ արար զծովն ձուլածոյ, տասն կան-
գուն շրթանէ ի շուրթն, գործ բոլորշի
[12]նռնաձեւ. հինգ կանգուն բարձրու-
թիւն նորա, եւ [13]զօգեալք երեսուն եւ
երիւք կանգնովք պատէին" զնա շուր-
24 ջանակի։ Եւ [14]ներքուստ ի ներքոյ նորա՝
շուրջանակի պատէին զնա ի տասն կանգ-
նոյ շուրջանակի", երկու կարգ [15]մութից
ձուլեալք ի ձուլին նորա [4]հաստատեալք։
25 Եւ երկոտասան եզն ի ներքոյ ծովուն.
երեքն հայէին ընդ հիւսիս, եւ երեքն
հայէին ընդ [16]ծով, եւ երեքն հայէին
ընդ հարաւ, եւ երեքն հայէին ընդ ա-
րեւելս. եւ ծովն ի վերայ նոցա ի վե-
րուստ կողմանէ. եւ ամենեցուն [17]թի-
26 կունք ի տունն"։ Եւ թանձրութիւն նո-
րա [18]թզաւ, եւ շուրթն նորա իբրեւ
զգործ շրթան բաժակի. եւ բոյս շու-
շանի ի վերայ նորա. եւ տանէր իբրեւ
երկուս հազարս մարս։
27 Եւ արար [19]մեքենայս տասն պղնձիս.
[20]հինգ կանգուն երկայնութիւն միոյ մե-
քենայի, եւ չորք կանգունք լայնու-
թիւն նորա, եւ [21]վեց կանգուն բարձրու-
28 թիւն նորա։ Եւ այս գործ էր մեքենայ-
թացն, [22]խարչք խարչք ի վերայ, եւ խարչք
29 ի մէջ աստանցիցն։ Եւ ի վերայ խարչից
նոցա ի մէջ աստանցիցն" առեւծք եւ ե-
զինք եւ քերոբէք, եւ ի վերայ [23]աստան-
ցիցն նոյնպէս ի վերոյ, եւ ի ներքոյ
առեւծուցն եւ եզանց՝ տեղիք գործ զառ
30 ի թափ։ Եւ չորք անիւք պղնձիք մի-
ում մեքենայթայն եւ առանցք պղնձիք.
եւ ի չորեցունց կողմանց նոցա ուսք
նոցա ի ներքոյ [24]աւազանացն եւ ուսք
ձուլեալք հանդէպ մարդոյ առ ընթե-
31 րակայք". Եւ բերան նորա ի ներքուստ
ի խոյակէն եւ ի վեր կանգնաւ. եւ բե-
րան նորա [25]գործ բոլորշի", նոյնպէս ի
կանգնոյ եւ ի կիսոյ թանձրութիւն նո-
րա. եւ առ բերանովն նորա [26]ճախարակ-
եայ հաստատուն" չորեքկուսի եւ ոչ բո-

[1]Եբր. պղնձիս [2]Եբր. միոյ սեանն [3]Եբր. եր-
կոտասան [4]ՅՆբր. պակաս [5]Եբր. Գործ հիւ-
սէն վանդակակերպ. շղթայագործ վասն խո-
յակացն որ ի վերայ գլխոյ սեանցն, եւթն վասն
միոյ խոյակի, եւ եւթն վասն միւսոյ խոյակի.
(18) Եւ արար սիւնս, եւ կարգս երկուս նռնա-
ձեւաց շուրջանակի ի վերայ միոյ վանդակակեր-
պին՝ ծածկել զխոյակն որ ի վերայ գլխոյ սեանն.
այնպէս արար երկրորդի խոյակին. (19) Եւ խո-
յակքն որ ի վերայ գլխոյ սեանցն որ ի սրահին
[6]Եբր. Եւ խոյակք ի վերայ երկոցունց սեանցն եւս
ի վերուստ, առ փորովն առընթեր վանդակա-
կերպին. եւ երկերիւր նռնաձեւք կարգաւ
[7]Եբր. սրահի [8]Եբր. զաջոյ կողմանն [9]Եբր. Յա-
քին, Նշանակէ, հաստատեսցէ [10]Եբր. ձախոյ
կողման [11]Նշանակէ զօրութիւն ի նմա

[12]Եբր. շուրջանակի [13]Եբր. ծիր երեսուն կանգ-
նովք պատէր [14]Եբր. դնդակք ընդ ծնօտիւ
նորա պատէին զնա շուրջանակի տասն տասն
առ կանգունն [15]Եբր. դնդակաց [16]Եբր.
արեւմուտս [17]Եբր. յետոյք ի ներքս [18]Եբր.
ուղկաւ [19]Այսինքն՝ խարիսխ. այսպէս եւ ի ստորեւ
[20]Եբր. չորք [21]Եբր. երեք [22]Եբր. սպառուածք
ի նոսա. եւ սպառուածք ի մէջ եզերացն։ (29)
Եւ ի վերայ սպառուածոց որ ի մէջ եզերացն՝
[23]Եբր. եզերացն [24]Եբր. ուսաղանին ուսք ձուլ-
եալք հանդերձ զարդուք առ ընթեր միոյ միոյ։
[25]Եբր. բոլորշի գործ խարսխի [26]Եբր. քանդակք
եւ սպառուածք

32 լոյսի։ Եւ չորք անիւք ի ներքոյ [1]հաս-
տատելոցն, եւ [2]ձեռք յանիւսն, ի մեքե-
նովթսն. եւ բարձրութիւն միոյ անուոյ
33 ի կանգնոյ եւ ի կիսոյ։ Եւ գործ անուոյն՝
իբրեւ զգործած անուոց կառաց, եւ
[2]ձեռք նոցա եւ պարանոցք խեցեաց եւ
թիկունք խեցեաց եւ ամենայն արար
34 նոցա ձուլածոյ։ Եւ չորք ուսք ի վե-
րայ չորեցունց անկեանց միոյ մեքենով-
թայն. անդստին ի մեքենովթայն ուսք
35 իւր։ Եւ ի գլուխ մեքենովթայն կէս
կանգնոյ [3]մեծ բոլորակ շուրջ գնովաւ ի
վերայ գլխոյ մեքենովթայն, եւ սկիզբն
ձեռաց նորա եւ խորչք״ նորա անդստին
36 ի նմանէ։ Եւ [4]բանային ի սկիզբն ձեռաց
նորա, եւ խորչք״ նորա քերովբք եւ ա-
ռիւծունք եւ արմաւենիք [5]կանգնեալք
առ նովաւ. իւրաքանչիւր հանդէպ ե-
րեսաց իւրոց ի ներքս եւ״ շուրջանակի։
37 Ըստ նմին օրինակի արար զամենայն
զտասնեսին մեքենովթսն. մի պայման
եւ մի չափ եւ մի օրինակ ամենեցուն։
38 Եւ արար տասն լուանարգս պղնձիս.
եւ ունէր լուանարգ մի քառասուն սա-
փոր. ի չորից կանգնոց լուանարգ մի
չափով, եւ լուանարգ մի ի վերայ միոյ
մեքենովթոյ՝ տասնեցունց մեքենով-
39 թայն։ Եւ եդ զմեքենովթսն հինգ յուսոյ
տանն յաջմէ, եւ զհինգն յուսոյ տանն
ի ձախմէ. եւ ծովն յուսոյ տանն ընդ
աջմէ՝ ընդ արեւելս ի հարաւոյ կողմանէ։
40 Եւ արար Քիրամ [6]զսանսն եւ [7]զջե-
ռուցիչսն եւ զտաշտսն. եւ կատարեաց
Քիրամ առնել զամենայն գործն զոր ա-
րար արքային Սողոմոնի ի տան Տեառն.
41 Սիւնս երկուս, եւ շրջանակս քանդակա-
գործից սեանցն ի վերայ գլխոյ սեանցն.
երկուս երկուս վանդակապատս՝ ծած-
կել զերկոսին շրջանակսն քանդակա-
գործայն որ էին ի վերայ սեանցն.
42 Զնռնաձեւսն զչորեքհարեւր երկոցունց
վանդակացն, երկու կարգ նռնաձեւաց
միոյ վանդակի, ծածկել շուրջ զերկո-
սին շրջանակս մեքենովթացն ի վերայ
43 երկոցունց սեանցն. Եւ զմեքենովթսն
եւ զլուանարգսն տասնեսին ի վերայ
44 մեքենովթայն. Եւ զծովն զմի, եւ զեր-
կոտասանեսին եզինսն ի ներքոյ ծովուն.
45 Եւ զսանսն եւ [7]զջեռուցիչսն [8]զերեսին
եւ զտաշտսն, եւ զամենայն կահն զոր
արար Քիրամ արքային Սողոմոնի ի տանն
Տեառն [9]եւ սիւնք քառասուն եւ ութ
տանն արքայի եւ տանն Տեառն. զա-
մենայն գործ զարքայի պատրաստեաց
Քիրամ պղնձի համօրէն. եւ ոչ գոյր
կշիռ պղնձոյն որով արար զամենայն
զգործսն զայնոսիկ ի բազմութենէ ան-
ափ յոյժ, եւ ոչ գոյր չափ կշռոյ պղնձոյն״
46 փայլնոյ։ Առ ափն Յորդանանու ձուլեաց
զայն արքայի, ի թանձրութեան երկրին
ի մէջ Սոկքովթայ եւ ի մէջ Սիրարթա-
47 մայ։ Եւ [10]ետ արքայ Սողոմոն [11]յամե-
նայն կահն, քանզի կարի յոյժ էր բազ-
մութեամբ եւ ոչ գոյր թիւ պղնձոյն։
48 Եւ արար Սողոմոն զամենայն կահն որ
ի տան Տեառն, զզոհանոցն ոսկի, եւ
զսեղանն յորոյ վերայ հացն պատարագի՝
49 ոսկի, Եւ զաշտանակսն հինգ ընդ աջմէ
եւ հինգ ընդ ձախմէ հանդէպ դաբիրայն
ի զուտ ոսկւոյ, եւ զբազմակալսն եւ
50 զճրագունսն եւ զյարդարիչսն ոսկիս, Եւ
[12]զգրանդսն եւ զբեւեռսն״ եւ զտաշտսն
եւ [13]զսկաւառակսն եւ զսափսն״ ոս-
կիս զուտ, եւ [14]զդրունս տանն ներք-
նոյ, զսրբութեան սրբութեանցն, եւ
զդրունս տան տաճարին՝ ոսկիս։
51 Եւ բովանդակեցաւ ամենայն գործն
զոր արար արքայ Սողոմոն զտանն
Տեառն. եւ տարաւ արքայ Սողոմոն
զսրբութիւնս Դաւթի հօր իւրոյ [8]եւ
զամենայն սրբութիւնս Սողոմոնի״ զար-
ծաթ եւ զոսկի եւ զկահ՝ ետ ի գանձս
տանն Տեառն։

ԳԼ. Ը

1 Յայնժամ եկեղեցացոյց արքայ Սողո-
մոն զամենայն ծերս Իսրայելի, հան-
դերձ ամենայն գլխօք [15]զաւազանացն
համբարձելոց״ հարց որդւոցն Իսրայելի
առ արքայ Սողոմոն [16]ի Սիոն, հանել
զտապանակ ուխտին Տեառն ի քաղաքէ
2 Դաւթի՝ այս է Սիոն։ Եւ եկեղեցացան

[1] Եբր. սպառուածոցն [2] Այլուստ՝ առանցք [3] Եբր. բարձրութեամբ բոլորակ շուրջանակի. եւ ի վերայ գլխոյ մեքենովթայն եզերք նորա եւ սպառուած [4] Եբր. քանդակեալ էին ի վերայ տախտակաց եզերաց նորա եւ սպառուածոց [5] Եբր. ըստ պատշաճութեան իւրաքանչիւր եւ զարդք կախեալք [6] Եբր. զլուանարդսն [7] Եբր. զբահսն

[8] Յեբր. դ—ի—ե [9] Եբր. ի պղնձոյ [10] Եբր. եթող կշռել [11] Եբր. զամենայն [12] Եբր. զբաժակսն եւ զբազմակալսն [13] Եբր. զխնկամանսն եւ զբուռուռսն [14] Եբր. զծխնիս դրանց [15] Եբր. ցեղիցն, զիշխանս [16] Եբր. յԵրուսաղէմ.

առ արքայ Սողոմոն ամենայն այր Իս-
րայէլի, յամսեանն Աթանիմ ի տօ-
3 նին, այն է ամիսն եւթներորդ։ Եւ ե-
կին ամենայն ծերք Իսրայէլի, եւ բար-
4 ձին քահանայքն զտապանակն։ Եւ հա-
նին զտապանակն Տեառն եւ զխորանն
վկայութեան, եւ զամենայն սպասն
սրբութեան որ ի խորանին վկայութեան.
եւ հանին զայն քահանայքն եւ Ղեւ-
5 տացիք։ Եւ արքայ Սողոմոն եւ ամե-
նայն ժողովուրդն Իսրայէլի գումարեալք
առ նա՝ հանդերձ նովաւ առաջի տապա-
նակին զենուին արջառս եւ ոչխարս
անհամարս եւ անթիւս ի բազմութենէ։
6 Եւ տարան ի ներքս քահանայքն զտա-
պանակ ուխտին Տեառն ի տեղի իւր, ի
դաբիր տանն, սրբութեան սրբութեանցն՝
7 ընդ թեւովք քերովբէիցն. Զի քերով-
բէքն թռուցեալ թեւովք ի վերայ տեղ-
ւոյ տապանակին, եւ ծածկէին քերով-
բէքն զտապանակն եւ [1]զսրբութիւնս
8 նորա ի վերուստ։ Եւ [2]կային ի վերայ
սրբեցելոյն, եւ հայէին գլուխք սրբե-
ցելոցն" ի սրբութեանց անտի հանդէպ
դաբիրայն, եւ արտաքս ոչ երեւէին.
9 եւ եղեն անդ մինչեւ ցայսօր։ Եւ ոչ
ինչ գոյր ի տապանակին, բայց երկու
տախտակքն քարեղէնք [3]տախտակք ուխ-
տի", զորս եդ անդ Մովսէս ի Քորեբ,
զորս ուխտեաց Տէր ընդ որդիսն Իսրա-
յէլի յելանել նոցա յերկրէն Եգիպտաց-
10 ւոց։ Եւ եղեւ իբրեւ ելին քահանայքն
ի սրբութենէն, եւ ամպն ելից զտունն
11 Տեառն. Եւ ոչ կարէին քահանայքն կալ
ի սպասու յերեսաց ամպոյն, զի փառք
Տեառն լցին զտունն։
12 Յայնժամ ասէ Սողոմոն, Տէր ասաց
13 [4]հովանի լինել միգով"։ Շինելով շինեցի
քեզ տուն բնակութեան, հաստատու-
14 թիւն աթոռոյ քում յաւիտեան։ Եւ
դարձոյց արքայ զերեսս իւր եւ օրհ-
նեաց զամենայն Իսրայէլ. եւ ամենայն
15 եկեղեցին Իսրայէլի կայր. Եւ ասէ,
Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի [3]այսօր,
որ խօսեցաւ բերանով իւրով [5]վասն
Դաւթի հօր իմոյ, եւ ձեռօք իւրովք
16 ելից. եւ ասէ, Յորէ յորմէ հանի զժո-
ղովուրդ իմ զԻսրայէլ յԵգիպտոսէ՝ ոչ
ընտրեցի ի քաղաքի միում ուրեք զա-
ւազանաց Իսրայէլի շինել տուն զի լի-
նիցի անուան իմոյ. եւ ընտրեցի զԴաւիթ
լինել ի վերայ ժողովրդեան իմոյ Իսրա-
17 յէլի։ Եւ եղեւ ի սրտի Դաւթի հօր իմոյ
շինել տուն անուան Տեառն Աստուծոյ
18 Իսրայէլի. Եւ ասէ Տէր ցԴաւիթ ցհայր
իմ, Փոխանակ զի եկն ի սիրտ քո շինել
տուն անուան իմոյ, բարւոք արարեր
19 զի եդեւ ի սրտի քում. Բայց դու ոչ
շինեսցես զտունն, այլ որդի քո որ ելա-
նիցէ յերանաց քոց՝ նա շինեսցէ տուն
20 անուան իմոյ։ Եւ կանգնեաց Տէր զբան
իւր զոր խօսեցաւ. եւ կացի ես փոխա-
նակ Դաւթի հօր իմոյ, եւ նստայ յա-
թոռն Իսրայէլի որպէս եւ խօսեցաւ Տէր.
եւ շինեցի տուն անուան Տեառն Ա-
21 ստուծոյ Իսրայէլի. Եւ եդի անդ տեղի
տապանակին, ուր է ուխտն Տեառն զոր
ուխտեաց Տէր ընդ հարսն մեր, ի հանել
նորա զնոսա յերկրէն Եգիպտացւոց։
22 Եւ յարեաւ Սողոմոն յերեսաց սեղա-
նոյն Տեառն առաջի ամենայն եկեղեց-
ւոյն Իսրայէլի, եւ տարածեաց զձեռս
23 իւր յերկինս, Եւ ասէ, Տէր Աստուած
Իսրայէլի, չիք իբրեւ զքեզ Աստուած
յերկինս ի վեր եւ յերկիր ի խոնարհ, որ
պահեսցես զուխտ եւ զողորմութիւն [6]ծա-
ռայի քում գնացելոյ առաջի քո ամե-
24 նայն սրտիւ իւրով", Պահել ծառայի քում
Դաւթի հօր իմոյ զոր խոստացար նմա
եւ խօսեցար բերանով քով, եւ ձեռօք
քովք կատարեցեր որպէս եւ յաւուր
25 յայսմիկ։ Եւ արդ, Տէր, Աստուած Իս-
րայէլի, պահեա ծառայի քում Դաւթի
հօր իմոյ զոր խօսեցար նմա եւ աս-
ցեր, Ոչ բարձցի քո այր յերեսաց իմոց
որ նստիցի յաթոռ Իսրայէլի, միայն թէ
զգուշասցին որդիք քո ճանապարհաց
իւրեանց գնալ առաջի իմ, որպէս եւ
26 գնացեր առաջի իմ։ Եւ արդ, Տէր, Ա-
ստուած Իսրայէլի, հաւատարիմ լիցի
բանն քո զոր խօսեցար ծառայի քում
Դաւթի հօր իմոյ։
27 Թէ [7]բնակիցէ՞ Աստուած ընդ մարդ-
կան որ ի վերայ երկրի. եթէ" երկինք
եւ երկնից երկինք չեն քեզ բաւական,
28 արդ զիա՞րդ տունս զոր շինեցի։ Եւ արդ
հայեաց յաղօթս ծառայի քում եւ ի
խնդրուածս իմ, Տէր Աստուած [8]Իսրայէլի,

[1] Եբր. զծածկս [2] Եբր. երկայնեցին զծածկոցն, եւ երեւէին գլուխք ծածկոցն [3] Յեբր. պակասէ
[4] Եբր. բնակել ի միգի [5] Եբր. ընդ

[6] Եբր. ծառայից քոց որ գնան առաջի քո ամենայն սրտիւ իւրեանց [7] Եբր. արդարեւ բնակիցէ Աստուած ի վերայ երկրի. ահա [8] Եբր. իմ

լսել պաղատանաց աղօթից ծառայի քո
29 որ [1]կայ առաջի քո առ քեզ՚՚. Լինել բաց
աչաց քոց զցայգ եւ զցերեկ ի տեղւոջս
զորմէ ասացեր թէ Եղիցի անուն իմ անդ,
ի լսել աղօթից զոր աղաչէ ծառայ քո ի
տեղւոջս յայսմիկ [2]ի տուէ եւ ի գիշերի՚՚։
30 Եւ լուիցես ձայնի ծառայի քո եւ ժո-
ղովրդեան քո Իսրայելի, զոր կայցեն
յաղօթս ի տեղւոջս յայսմիկ. եւ դու
լուիցես ի տեղւոջ բնակութեան քո յեր-
31 կինս, եւ [3]արասցես եւ քաւեսցես զոր
ինչ ոք մեղիցէ ընկերի իւրում. եւ եթէ
առցէ ի վերայ նորա անէծս անիծանել
զնա, եւ խոստովան լիցի՚՚ առաջի սե-
32 ղանոյ քո ի տանս յայսմիկ, Եւ դու
լուիցես յերկնից եւ արասցես, եւ դա-
տեսցես [4]զժողովուրդ քո զԻսրայէլ՚՚ յա-
նօրինել անօրինին, տալ ըստ ճանա-
պարհաց նորա ի գլուխ նորա եւ ար-
դարացուցանել զարդարն՝ տալ նմա ըստ
արդարութեան նորա։
33 Եւ ի պարտել ժողովրդեան քո Իս-
րայելի առաջի թշնամեաց, յորժամ մե-
ղանչիցեն քեզ եւ դառնայցեն առ քեզ
եւ խոստովան լիցին անուան քում, եւ
յաղօթս կայցեն եւ աղաչիցեն առ քեզ
34 ի տանս յայսմիկ, Եւ դու լուիցես յերկ-
նից եւ քաւեսցես զմեղս ժողովրդեան
քո Իսրայելի, եւ դարձուսցես զնոսա
յերկիրս զոր ետուր հարց նոցա։
35 Եւ յարգելուլ երկնից եւ ի չլինել
անձրեւի, զի մեղուցեալ իցեն քեզ, եւ
յաղօթս կացցեն ի տեղւոջս յայսմիկ, եւ
խոստովան լինիցին անուան քում, եւ
ի մեղաց իւրեանց դառնայցեն, յորժամ
36 նկուն առնիցես զնոսա, Լուիցես յերկ-
նից եւ քաւեսցես զմեղս ծառայից քոց
եւ ժողովրդեան քո Իսրայելի. զի ցուց-
ցես նոցա ճանապարհ բարի գնալ ի նմա,
եւ տացես անձրեւ յերկիր քո զոր ետուր
ժողովրդեան քում ի ժառանգութիւն։
37 Եւ սով եթէ լինիցի յերկրի, կամ թէ
մահ լինիցի, կամ թէ հրայրեացք կամ
դալուկն կամ ջորեակ, կամ ժանգ եթէ
լինիցի, եւ նեղիցէ զնա թշնամի իւր ի
միում ի քաղաքացն իւրոց, ամենայն պա-
38 տահար եւ ամենայն ցաւ, Ամենայն ա-
ղօթք, եւ ամենայն խնդրուածք որ լի-
նիցին ամենայն մարդոյ, ամենայն ժո-
ղովրդեան քո Իսրայելի, որպէս զիարդ
գիտիցեն իւրաքանչիւր զախտ սրտի
իւրոյ, եւ տարածեսցէ զձեռս իւր ի
39 տանս յայսմիկ, Եւ դու լուիցես յերկ-
նից ի պատրաստ բնակութենէ քումմէ,
եւ քաւեսցես եւ արասցես. եւ տացես
առն ըստ ամենայն ճանապարհաց իւրոց,
որպէս եւ գիտիցես զսիրտ նորա. զի
դու միայն գիտես զսիրտ ամենայն որդ-
40 ւոց մարդկան. Զի երկիցեն ի քէն զա-
մենայն աւուրս իւրեանց որչափ եւ
կեցցեն ի վերայ երեսաց երկրին զոր
ետուր հարցն մերոց։
41 Եւ օտարոտին որ ոչ իցէ ի ժողովրդե-
նէ քումմէ Իսրայելէ, եւ նա եկեալ ի-
42 ցէ յերկրէ հեռաստանէ[5], Ուր եւ լսիցէ
զանուանէ քումմէ մեծէ եւ զձեռանէ
քումմէ հզօրէ եւ զբազկէ քումմէ ձգե-
լոյ, եւ եկեսցէ եւ յաղօթս կացցէ ի
43 տեղւոջս յայսմիկ, Եւ դու լուիցես յերկ-
նից ի պատրաստ բնակութենէ քում-
մէ, եւ արասցես ըստ ամենայնի զոր
եւ կարդասցէ առ քեզ օտարոտին. զի
ծանիցեն ամենայն ազգք երկրի զանուն
քո. եւ երկիցեն ի քէն որպէս եւ ժո-
ղովուրդ քո Իսրայէլ. եւ ծանիցեն զի
անուն քո կոչեցեալ է ի վերայ տանս
զոր շինեցի։
44 Եւ եթէ ելանիցէ ժողովուրդ քո ի պա-
տերազմ ընդ թշնամիս իւր ի ճանապարհի
[6]յորմէ դարձուսցես՚՚ զնոսա, եւ կացցեն
յաղօթս յանուն Տեառն ի ճանապարհի
քաղաքիս զոր ընտրեցեր, եւ տանս զոր
45 շինեցի անուան քում, Եւ լուիցես
յերկնից աղօթից նոցա եւ խնդրուածոց
նոցա, եւ արասցես նոցա իրաւունս։
46 [7]Քանզի մեղանչիցեն քեզ, զի չիք
մարդ որ ոչ մեղանչէ, եւ եթէ [8]ածցես
ի վերայ՚՚ նոցա, եւ մատնեսցես զնոսա
առաջի թշնամեաց, եւ գերիցեն զնոսա
գերիչք իւրեանց յերկիր թշնամւոյ ի
47 հեռաւոր կամ ի մօտաւոր, Եւ դար-
ձուսցեն զսիրտս իւրեանց յերկրին յոր
գերեցան, եւ դառնայցեն եւ աղաչի-
ցեն զքեզ յերկրին գերութեան իւր-
եանց, եւ ասիցեն, Մեղաք, անօրինե-
48 ցաք, անիրաւեցաք, Եւ դարձցին առ քեզ

---

[1] Եբր. կայ յաղօթս առաջի քո այսօր [2] Եբր. ցորեկ [3] Եբր. լուիցես եւ քաւեսցես։ (31) Եթէ մեղիցէ ոք ընկերի իւրում, եւ նա խնդրեսցէ ի նմանէ երդումն, եւ երդումն գայցէ [4] Եբր. զծառայս քո

[5] Եբրայեցին յաւելու, վասն անուան քո [6] Եբր. ընդ որ առաքեսցես [7] Կամ, Յորժամ [8] Եբր. բարկասցիս

յամենայն սրտէ իւրեանց եւ յամենայն
անձնէ իւրեանց յերկրին թշնամեաց
իւրեանց յոր փոխեցին զնոսա, եւ յա-
ղօթս կացցեն առ քեզ [1]վասն ճանա-
պարհի երկրին իւրեանց զոր ետուր
հարցն նոցա եւ քաղաքիս զոր ընտրեցեր
եւ տանս զոր շինեցի անուան քում,
49 Եւ լուիցես յերկնից ի պատրաստ բնա-
կութենէ քումմէ աղօթից նոցա եւ
խնդրուածոց նոցա, եւ արասցես նոցա
50 իրաւունս. Եւ քաւեսցես զանիրաւու-
թիւնս նոցա զոր մեղան քեզ, եւ ըստ
ամենայն արհամարհանաց նոցա զոր
արհամարհեցին զքեզ. եւ տացես զնո-
սա ի գթութիւն առաջի գերչաց իւր-
51 եանց, եւ գթասցին ի նոսա. Զի ժո-
ղովուրդ քո եւ ժառանգութիւն քո են
զորս հաներ յերկրէն Եգիպտացւոց ի
52 միջոյ երկաթոյն հալոցաց։ Եւ եղիցին
աչք քո [2]եւ ականջք քո" բաց ի խնդ-
րուածս ծառայի քո. եւ ի խնդրուածս
ժողովրդեան քո Իսրայէլի՝ լսել նոցա
յամենայնի որովք եւ կարդասցեն առ
53 քեզ։ Զի դու զատուցեր զնոսա քեզ ի
ժառանգութիւն յամենայն ժողովրդոց
երկրի, որպէս խօսեցար ի ձեռն Մով-
սիսի ծառայի քո ի հանել զհարսն մեր
յԵգիպտոսէ, Տէր Տէր։

[2]Յայնժամ խօսեցաւ Սողոմոն վասն
տանն իբրեւ կատարեաց շինել զնա.
Զարեգակն ծանեաւ յերկինս. Տէր ա-
սաց բնակել ի մէգի. Շինեա զտուն իմ
տուն վայելուչ բնակել ի նմա նորոգու-
թեամբ։ Ո՞չ աւանիկ գրեալ է այս ի
54 գիրս երգոյ"։ Եւ եղեւ իբրեւ կատար-
եաց Սողոմոն կալ յաղօթս առ Տէր
զամենայն աղօթս զայս եւ զխնդրուածս,
յարեաւ յերեսաց սեղանոյն Տեառն ուր
կայր ի ծունս ի վերայ ծնգաց իւրոց,
եւ ձեռք իւր ընդ երկինս տարածեալ,
55 Եւ եկաց եւ օրհնեաց զամենայն եկե-
ղեցին Իսրայէլի մեծաձայն, եւ ասէ,
56 Օրհնեալ է Տէր [2]այսօր, որ ետ հանգիստ
ժողովրդեան իւրում Իսրայէլի ըստ ա-
մենայնի զոր եւ խօսեցաւ. ոչ վրիպեաց
բան մի յամենայն բանից նորա բարեաց
որովք խօսեցաւ ի ձեռն Մովսիսի ծա-
57 ռայի իւրոյ։ Եղիցի Տէր Աստուած մեր
ընդ մեզ որպէս էր ընդ հարսն մեր,
58 եւ մի՛ թողցէ [3]զմեզ, Այլ դարձուսցէ
զմեզ առ ի չխոտորելոյ" սրտից մերոց ի
նմանէ, գնալ յամենայն ճանապարհս
նորա եւ պահել զամենայն պատուիրանս
նորա եւ զհրամանս նորա եւ զիրաւունս
նորա զորս պատուիրեաց հարցն մերոց։
59 Եղիցին բանքս իմ այսօրիկ որովք պա-
ղատեցայ առաջի Տեառն [2]Աստուծոյ մե-
րոյ" մերձենալ առ Տէր Աստուած մեր
ի տուէ եւ ի գիշերի, առնել իրաւունս
ծառայի քում, եւ իրաւունս ժողովր-
դեան քում Իսրայէլի, զբան օր ըստ օ-
60 րէ. Զի ծանիցեն ամենայն ժողովուրդք
երկրի, զի Տէր՝ նա է Աստուած, եւ չիք
61 այլ ոք։ Եւ եղիցին սիրտք [4]մեր կատա-
րեալք առ Տէր Աստուած մեր [2]անարա-
տութեամբ գնալ ըստ հրամանաց նո-
րա, եւ պահել զպատուիրանս նորա
որպէս եւ յաւուր յայսմիկ։
62 Եւ արքայ եւ ամենայն որդիքն Իս-
րայէլի ընդ նմա զոհեցին զոհս առաջի
63 Տեառն։ Եւ զոհեաց արքայ Սողոմոն
զոհս խաղաղականաց զորս զոհեաց
Տեառն յարջառոյ քսան եւ երկուս հա-
զարս, եւ յոչխարաց հարեւր եւ քսան
հազար. եւ արար նաւակատիս տանն
Տեառն արքայ եւ ամենայն որդիքն Իս-
64 րայէլի։ Յաւուր յայնմիկ սրբեաց ար-
քայ զմիջոց [5]սրահին որ հանդէպ տանն
Տեառն. զի անդ արար զողջակէզսն եւ
զպատարագսն եւ զպոհսն եւ զճարպսն
խաղաղականաց. զի սեղանն պղնձի որ
առաջի Տեառն կայր՝ փոքր էր. եւ ոչ
կարէր ընդունել զողջակէզսն եւ զպա-
տարագս եւ զզոհս խաղաղականաց։
65 Եւ արար Սողոմոն յաւուր յայնմիկ
տօն, եւ ամենայն Իսրայէլ ընդ նմա
եկեղեցի մեծ, ի մտիցն Եմաթայ մինչեւ
ցգետն Եգիպտացւոց. առաջի Տեառն
Աստուծոյ մերոյ [2]ի տանն զոր շինեաց,
ուտելով եւ ըմպելով եւ ուրախ լինելով
առաջի Տեառն Աստուծոյ մերոյ" զեւթն
օր եւ զեւթն օր, աւուրս չորեքտասան։
66 Եւ յաւուրն ութերորդի արձակեաց
զժողովուրդն. եւ օրհնեցին զարքայ
եւ գնացին իւրաքանչիւր ի բնակու-
թիւնս իւրեանց, խնդութեամբ եւ սրտի
զուարթութեամբ ի վերայ ամենայն բա-
րեացն զոր արար Տէր ծառայի իւրում
Դաւթի՝ եւ Իսրայէլի ժողովրդեան իւրում։

[1] Եբր. ի  [2] Յեբր. պակաս  [3] Եբր. զմեզ, եւ մի՛ լքցէ զմեզ, (58) Առ ի չխոտորելոյ

[4] Եբր. ձեր  [5] Եբր. գաւթին

ԳԼ. Թ

1 Եւ եղեւ իբրեւ կատարեաց Սողոմոն
չինել զտունն Տեառն եւ զտունն ար-
քային, եւ զամենայն հանդերձանս Սո-
2 ղոմոնի զոր կամեցաւ առնել, Եւ երե-
ւեցաւ Տէր Սողոմոնի երկրորդ անգամ,
3 որպէս երեւեցաւ նմա ի Գաբաւոն, Եւ
ասէ ցնա Տէր, Լուայ ձայնի աղօթից քոց
եւ աղաղակման զոր աղաղակեցեր ա-
ռաջի իմ, [1]արարի քեզ ըստ ամենայն աղօ-
թից քոց." սրբեցի զտունդ զոր շինե-
ցեր դնել զանուն իմ անդ յաւիտեան,
եւ եղիցին աչք իմ եւ սիրտ իմ անդ զա-
4 մենայն աւուրս: Եւ դու եթէ գնասցես
առաջի իմ, որպէս գնաց Դաւիթ հայր քո
[2]սրբութեամբ սրտիւ եւ ուղղութեամբ՝
առնել ըստ ամենայնի զոր պատուիրեցի
նմա, եւ զհրամանս իմ եւ զպատուի-
5 րանս իմ պահեսցես, Կանգնեցից զա-
թոռ թագաւորութեան քո ի վերայ Իս-
րայէլի յաւիտեան, որպէս խօսեցայ
Դաւթի հօր քում եւ ասացի, Մի պա-
կասեսցէ քո այր [3]առաջնորդ յԻսրայէլէ":
6 Ապա թէ դառնալով դառնայցէք դուք
եւ որդիք ձեր յինէն, եւ ոչ պահիցէք
դուք զպատուիրանս իմ եւ զհրամանս իմ
զոր [4]ետ Մովսէս" առաջի ձեր, եւ եր-
թայցէք եւ ծառայիցէք աստուածոց օ-
տարաց եւ երկիր պագանիցէք նոցա,
7 Բարձից զԻսրայէլ յերկրէն զոր ետու
նոցա եւ զտունդ զայդ զոր սրբեցի ա-
նուան իմոյ՝ ընկեցից յերեսաց իմոց. եւ
եղիցի Իսրայէլ [5]յապականութիւն եւ ի
8 խօսս ընդ ամենայն ժողովուրդս: Եւ
տունդ բարձրացեալ՝ ի զրոյցս. ամենայն
որ անցանիցէ առ դովաւ՝ զարմասցի եւ
շշեսցէ եւ ասասցէ, Ընդէ՞ր արար Տէր
այսպէս երկրիս այսմիկ եւ տանս այս-
9 միկ: Եւ ասասցեն, Փոխանակ զի թո-
ղին զՏէր Աստուած իւրեանց որ եհան
զհարս նոցա յԵգիպտոսէ ի տանէ ծառայ-
ութեան, եւ բուռն հարին զաստուածոց
օտարաց, եւ երկիր պագին նոցա եւ
ծառայեցին նոցա, վասն այնորիկ ած
Տէր ի վերայ դոցա զամենայն չարիսդ
զայդոսիկ: [1]Յայնժամ եհան Սողոմոն
զդուստրն Փարաւոնի ի քաղաքէ Դաւ-
թի ի տուն իւր՝ զոր շինեաց իւր:"
10 Եւ եղեւ [6]յաւուրսն յայնոսիկ յամս քսան
զոր" շինեաց Սողոմոն զերկոսին տունսն՝
զտունն Տեառն եւ զտունն արքայի,
11 Քիրամ արքայ Տիւրոսի ձեռնտու էր
Սողոմոնի եղեւնափայտիւք եւ փայտիւք
մայրից եւ ոսկւով, [7]եւ ամենայն կա-
մօք իւրովք". յայնժամ ետ արքայ Սո-
ղոմոն Քիրամայ քսան քաղաք ի Գալի-
12 լեա: Եւ ել Քիրամ ի Տիւրոսէ [1]եւ չո-
գաւ ի Գալիլեա" տեսանել զքաղաքսն
զոր ետ նմա Սողոմոն, եւ ոչ եղեւ նմա
13 հաճոյ. Եւ ասէ, Զի՞նչ են քաղաքքս
այսոքիկ զոր ետուր ինձ, եղբայր. եւ
կոչեաց զնոսա [8]սահմանս մինչեւ ցայ-
14 սօր: Եւ [9]եբեր Քիրամ Սողոմոնի հա-
րեւր եւ քսան տաղանդ ոսկւոյ:
15 Եւ այս [10]են հանդերձանք աւարին",
զոր եհան արքայ Սողոմոն շինել զտունն
Տեառն եւ զտունն [11]արքայի, եւ զՄեղոն
եւ զբարձառ անդակն, խնուլ զխրամս
քաղաքին Դաւթի, եւ զԱսուր եւ
զՄայդան եւ զպարիսպն Երուսաղեմի,
եւ զԵսեր եւ զՄակեդդով եւ զԳազեր,
16 Փարաւոնի արքայի Եգիպտացւոց. քան-
զի ել" եւ առ զԳազեր, եւ այրեաց
զնա հրով, եւ զՔանանացին որ նստէր
ի քաղաքին՝ սպան, եւ ետ զնա պաշ-
տատական դստեր իւրում կնոջ Սողոմո-
17 նի: Եւ շինեաց Սողոմոն զԳազեր եւ
18 զԲեթորոն զներքին. Եւ զԲաղաթ եւ
[12]զԹերմոթ յանապատի յերկրի անդ,
19 Եւ զամենայն քաղաքս [13]ընտրութեանց
որ էին Սողոմոնի, եւ զքաղաքս կա-
ռաց եւ զամենայն քաղաքս երիվարաց,
եւ զհանդերձանս Սողոմոնի զոր հան-
դերձեաց շինել յԵրուսաղէմ եւ ի Լի-
20 բանան եւ յամենայն [14]երկրին. Վասն
չիշխելոյ նորա ամենայն ազգին մնացե-
լոյ" յԱմովրհացւոցն եւ ի Քետացւոց
եւ ի Փերեզացւոց եւ ի Խեւացւոց եւ
[15]ի Քանանացւոց եւ ի Յեբուսացւոց եւ
ի Գերգեսացւոց", որ ոչ յորդւոցն Իս-
21 րայէլի էին. Որդիք նոցա մնացեալք
յետ նոցա յերկրին, զորս ոչ կարացին
որդիքն Իսրայէլի սատակել. եւ արկ

[1] Եբր. գ-ի--ե [2] Եբր. կատարեալ [3] Եբր. յաթոռոյ Իսրայէլի [4] Եբր. ետու [5] Եբր. յառակս [6] Եբր. ի կատարածի ամաց քսանից յորս

[7] Եբր. ըստ ամենայն կամաց նորա [8] Եբր. երկիր Քաբողայ, այսինքն՝ անհաճոյ [9] Եբր. առաքեաց [10] Եբր. է բան հարկին [11] Եբր. իւր և զՄեղոն և զպարիսպն Երուսաղեմի, եւ զՀասոր, եւ զՄակեդդով, եւ զԳազեր: (16) Փարաւոն արքայ Եգիպտացւոց ել [12] Եբր. զԹադմոր [13] Եբր. համբարաց [14] Եբր. երկրին իշխանութեան իւրոյ. (20) Զամենայն ազգն զմնացեալ [15] Եբր. ի Յեբուսացւոց

զնոսա Սողոմոն ընդ հարկօք ծառայու-
22 թեան մինչեւ ցայսօր։ Եւ յորդւոյն
Իսրայելի ոչ [1]ետ Սողոմոն ի հանգեր-
ձաւորութիւն". զի նոքա արք պատե-
րազմօղք էին, եւ ծառայք նորա եւ իշ-
խանք նորա եւ սպառազէնք նորա եւ
23 [2]հեծեալք նորա։ Եւ այս են իշխանք
որ կային ի վերայ գործոյն Սողոմոնի,
հինգ հարեւր եւ յիսուն, որ ունէին
զժողովուրդն որ գործէին զգործն։
24 Բայց դուստրն Փարաւոնի ել ի քա-
ղաքէն Դաւթի ի տունն իւր, զոր շի-
նեաց նմա. յայնժամ շինեաց զՄեղոն։
25 Եւ հանէր Սողոմոն երիցս անգամ ի
տարւոջ ողջակէզս եւ խաղաղականս ի
վերայ սեղանոյն զոր շինեաց Տեառն,
եւ արկանէր խունկս առաջի Տեառն։
26 Եւ բովանդակեաց զտունն։ Եւ արար
նաւ արքայ Սողոմոն ի Գասիոնգաբեր,
որ է մերձ յԵղաթ՝ յեզեր [3]վերջնոյ ծո-
27 վուն յերկրին Եդոմայ։ Եւ առաքեաց
Քիրամ ընդ նաւուն ի ծառայից իւրոց
նաւորդս հմուտս նաւարկութեան ծովու
28 ընդ ծառայս Սողոմոնի։ Եւ չոգան [4]ի
Սովփերա, եւ առին անտի ոսկի չո-
րեքհարեւր եւ քսան տաղանդ, եւ բե-
րին արքայի Սողոմոնի։

Գլ. Ժ

1 Եւ տիկինն Սաբայ լուաւ զանուն Սո-
ղոմոնի եւ զանուն Տեառն [5]եւ զիմաս-
տութիւն Սողոմոնի". եւ եկն փորձել
2 զնա առակօք։ Եւ եկն յԵրուսաղէմ զօ-
րու ծանու յոյժ, եւ ուղտուք որ բար-
ձեալ բերէին խունկս եւ ոսկի բազում
յոյժ եւ ականս պատուականս. եւ ե-
մուտ առ Սողոմոն, եւ խօսեցաւ ընդ
նմա զամենայն ինչ որ էր ի սրտի իւ-
3 րում։ Եւ մեկնեաց նմա Սողոմոն զա-
մենայն բանս նորա, եւ ոչ էր բան
ախալեալ յարքայէ զոր ոչ մեկնեաց նմա։
4 Եւ ետես [6]տիկինն զամենայն իմաստու-
թիւնն Սողոմոնի, եւ զտունս զոր շի-
5 նեաց, Եւ զխորտիկս Սողոմոնի, եւ
զաթոռ ծառայից նորա, եւ զկարգ պաշ-
տօնէից նորա, եւ զհանդերձանս նոցա,
եւ զմատռուակս նորա, եւ [7]զողջա-
կէզս նորա զոր մատուցանէր" Տեառն,
6 եւ յիմարեցաւ։ Եւ ասէ ցարքայ Սողո-
մոն, Ճշմարիտ էր բանն զոր լուայ յեր-
կրին իմում վասն բանից քոց եւ վասն
7 իմաստութեան քո. Եւ ոչ հաւատացի
խօսելեացն առ իս, մինչեւ ինձէն եկի
եւ տեսին աչք իմ. եւ ահա ի կէս չէ
զոր պատմեցին ինձ իմաստութեանդ
զոր յաւելեր եւ բարութեան, եւ ամե-
նայն համբաւոյն զոր լուէին յերկրին ի-
8 մում։ Երանելի են [8]կանայք քո եւ ե-
րանելի ծառայք քո որ կան առաջի քո՝
եւ հանապազ լսեն զիմաստութիւն քո։
9 Եւ եղիցի Տէր Աստուած քո օրհնեալ
որ հաճեցաւ ընդ քեզ տալ զքեզ յա-
թոռ Իսրայելի. վասն սիրելոյ Տեառն
զԻսրայէլ հաստատել յաւիտեան. եւ
կացոյց զքեզ արքայ ի վերայ նոցա,
առնել իրաւունս եւ արդարութիւն [5]յա-
10 տեանս նոցա"։ Եւ ետ Սողոմոնի հա-
րեւր եւ քսան տաղանդ ոսկւոյ եւ
խունկս բազումս յոյժ եւ ականս պա-
տուականս. եւ ոչ էին եկեալ այնպիսի
խունկք բազումք [5]եւ անուշունք", զորս
ետ տիկինն Սաբայ արքայի Սողոմոնի։
11 Եւ նաւն Քիրամայ որ բերէր ոսկի
[9]ի Սովփերայ, եբեր [9]ի Սովփերայ փայտ
[10]անտաշ բազում յոյժ եւ ականս պա-
12 տուականս։ Եւ արար արքայ զփայտսն
[10]անտաշս մոյթս տանն Տեառն եւ տանն
արքայի, եւ քնարս եւ տաւիղս երգե-
ցողաց. եւ չէր եկեալ այնպիսի փայտ
[10]անտաշ յերկիրն", եւ ոչ երեւեցաւ
ուրեք մինչեւ ցայսօր։
13 Եւ արքայ Սողոմոն ետ տիկնոջն Սա-
բայ զամենայն ինչ զոր կամեցաւ եւ
զոր խնդրեաց, բաց յայնմանէ զորս
տուեալ էր [11]նորա ի ձեռս" արքայի
Սողոմոնի. եւ դարձաւ եւ գնաց յերկիր
իւր՝ ինքն եւ [5]ամենայն ծառայք իւր։
14 Եւ էր կշիռ ոսկւոյն եկելոյ Սողոմոնի
ի միում տարւոջ վեց հարեւր եւ վաթ-
15 սուն եւ վեց տաղանդ ոսկւոյ. Թող զհար-
կացն կարգելոց եւ զվաճառաց վաճառա-
կանաց, եւ զամենայն թագաւորաց
[12]այնր կողման" եւ նախարարաց երկրին։
16 Եւ արար արքայ Սողոմոն [13]երեքհա-
րեւր նիզակ" ոսկի կռածոյ, եւ [14]երեքհա-

[1]Եբր. առ Սողոմոն ծառայ [2]Եբր. վերակացուք կառաց եւ երիվարաց [3]Եբր. Կարմիր [4]Եբր. յՈփիր [5-5]Եբր. պակասէ [6]Եբր. տիկինն Սաբայ [7]Կամ, զսանդուղն որ ելանէր ի տունն

[8]Եբր. արք [9]Եբր. յՈփիրայ [10]Եբր. ալմուկ [11]Եբր. Նմա ըստ ձեռին [12]Եբր. Արաբացւոց, կամ, խառն ժողովրդոց [13]Եբր. երկերիւր վահան [14]Եբր. վեցհարիւր սիկղ

բեւր դահեկան՚՚ ի վերայ միոյ [1]նիզակի.
17 Եւ երեքհարեւր [2]զէն ոսկի կռեա, [3]եւ
երեք մանք ոսկւոյ ի մի զէն՚՚. եւ եդ զայն
արքայ ի տուն անտառին Լիբանանու։
18 Եւ արար արքայ աթոռ փղոսկրեայ
մեծ, եւ պատեաց զնա ոսկւով փոր-
19 ձով. Վեց աստիճան աթոռոյն, եւ [4]զէմք
եզանց՚՚ ի թիկանց կողմանէ աթոռոյն,
եւ ձեռք աստի եւ անտի ի վերայ ա-
թոռոյն նստելոյ, եւ երկու առիւծունք
20 կային առընթեր ձեռացն։ Եւ երկոտա-
սան առեւծք կային ի վերայ վեցեցունց
աստիճանացն աստի եւ անտի. եւ ոչ եղեւ
այնպիսի յամենայն թագաւորութեան։
21 Եւ ամենայն կահ սպասու արքայի
Սողոմոնի ոսկի [5]գործեալ, եւ աւազանք
ոսկիք՚՚, եւ ամենայն կահ տան անտա-
ռին Լիբանանու [6]ոսկւով պատեալ՚՚.
եւ ոչ գոյր արծաթ, քանզի ոչ էր հա-
մարեալ արծաթ յաւուրս Սողոմոնի թէ
22 իցէ ինչ։ Զի նաւ Թարսացի էր Սո-
ղոմոնի արքայի ի ծովու ընդ նաւս
Քիրամայ, եւ յերեամ գայր արքայի
նաւ ի Թարսսէ, ոսկւոյ եւ արծաթոյ
եւ ժանեաց փղաց եւ կապկաց եւ
սիրամարգաց։
23 Եւ մեծացաւ Սողոմոն քան զամենայն
թագաւորս երկրի մեծութեամբ եւ ի-
24 մաստութեամբ։ Եւ ամենայն [7]թագա-
ւորք երկրի խնդրէին տեսանել՚՚ զերեսս
Սողոմոնի, լսել զիմաստութիւն նորա
25 զոր ետ [8]Տէր ի սիրտ նորա։ Եւ նոքա բե-
րէին իւրաքանչիւր զպատարագս իւ-
րեանց, անօթս արծաթեղէնս եւ անօթս
ոսկեղէնս եւ հանդերձս, [9]ստաշխն եւ
խունկս եւ ձիս եւ ջորիս, ամի ամի։
26 Եւ ժողովեաց Սողոմոն կառս եւ հե-
ծեալս. եւ էին Սողոմոնի [10]քառասուն
հազար ձիք մատակք՚՚ կառաց, եւ երկո-
տասան հազար երիվարաց, եւ եդ զնոսա
ի քաղաքս կառաց, եւ որ ընդ արքայի
յԵրուսաղէմ։ [5]Եւ էր իշխան ամենայն
թագաւորացն ի Գետոյն մինչեւ ցայլազգիս,
27 եւ մինչեւ ցսահմանս Եգիպտացւոց։՚՚ Եւ
ետ արքայ զարծաթ [5]եւ զոսկի՚՚ յԵրու-
սաղէմ իբրեւ զքարինս, եւ զեղեւնա-
փայտ՝ իբրեւ զմողաթզենիս ի դաշտս
28 բազմութեամբ։ Եւ ելք երիվարաց Սո-
ղոմոնի յԵգիպտոսէ, եւ [11]ի Թեկուայ
վաճառք արքայի. եւ առնուին ի Թե-
29 կուայ գնովք՚՚։ Եւ ելանէին ելք կա-
ռաց յԵգիպտոսէ փոխանակ [12]արծա-
թոյ, եւ ձի ընդ հարեւր եւ յիսուն ար-
ծաթոյ. եւ նոյնպէս թագաւորացն ա-
մենեցունց Քետտիմայ, եւ թագաւորացն
Ասորւոց [13]որ ընդ ծովակողմն՚՚ ելանէին։

Գլ. ԺԱ

1 Եւ արքայ Սողոմոն [14]էր կնասէր. եւ
առ իւր՚՚ կանայս օտարոտիս բազումս,
եւ զդուստրն Փարաւոնի, եւ Մովա-
բացիս եւ Ամմանացիս եւ Եդովմայեցիս եւ
[15]Ասորիս եւ Քետացիս [5]եւ Ամորհացիս՚՚,
2 Յազգացն յորոց [16]վճարեաց Տէր որդւոցն
Իսրայէլի չմտանել առ նոսա, եւ նոքա
մի մտցեն առ ձեզ թէ զուցէ խոտո-
րեցուցանիցեն զսիրտս ձեր զկնի կռոցն
իւրեանց. ի նոսա յարեցաւ Սողոմոն
3 սիրել։ Եւ էին նորա կանայք տիկնայք
եւթն հարեւր, եւ հարճք երեք հա-
րեւր. եւ խոտորեցուցին կանայք նորա
4 զսիրտ նորա։ Եւ եղեւ ի ժամանակի
ծերութեանն Սողոմոնի կանայք նորա
խոտորեցուցին զսիրտ նորա զհետ աս-
տուածոց օտարաց. եւ ոչ էր սիրտ նո-
րա կատարեալ ընդ Տեառն Աստուծոյ
իւրոյ իբրեւ զսիրտն Դաւթի հօր իւրոյ։
5 Եւ գնաց Սողոմոն զհետ Աստարտայ
գարշելւոյ Սիդոնացւոց, եւ զհետ Մեղ-
6 քոմայ գարշելւոյ որդւոցն Ամոնայ։ Եւ
արար Սողոմոն չար առաջի Տեառն, եւ
ոչ չոգաւ զհետ Տեառն իբրեւ զԴաւիթ
7 զհայր իւր։ Յայնժամ շինեաց Սողոմոն
զբարձրաւանդակն Քամովսայ [17]կռոցն
Մովաբու ի լերինն հանդէպ Երուսաղե-
մի, եւ Մեղքոմայ [17]կռոց որդւոցն Ամով-
նայ [5]եւ Աստարտայ գարշելւոյ Սիդո-
8 նացւոց՚՚։ Եւ այնպէս արար ամենայն
կանանց իւրոց օտարոտեաց. արկանէին
խունկս եւ զոհէին կռոց իւրեանց։
9 Եւ բարկացաւ Տէր Սողոմոնի, զի
խոտորեցոյց զսիրտ իւր ի Տեառնէ Աս-
տուծոյ Իսրայէլի որ երեւեցաւ նմա
10 երկիցս, Եւ պատուիրեաց նմա վասն

[1] Եբր. վահանի [2] Եբր. ասպար [3] Եբր. երեք մնաս ոսկւոյ ի մի ասպար [4] Եբր. գլուխ բոլորշի [5] Յեբր. պակասէ [6] Եբր. ոսկի զուտ [7] Եբր. երկիր խնդրէր [8] Եբր. Աստուած [9] Եբր. զէնս [10] Եբր. հազար եւ չորեքհարեւր

[11] Եբր. վաճառականք արքային առնուին երամակս գնովք [12] Եբր. վեցհարեւր արծաթոյ [13] Եբր. ի ձեռն նոցա [14] Եբր. սիրեաց [15] Եբր. Սիդոնացիս [16] Եբր. ասաց [17] Եբր. գարշելւոյ

բանիւն այնորիկ, ամենեւին չերթալ զհետ
աստուածոց օտարաց, եւ [1]պահել եւ
առնել" զոր պատուիրեաց նմա Տէր
11 [2]Աստուած ։ Եւ ասէ Տէր ցՍողոմոն,
Փոխանակ զի եղեւ այդ ընդ քեզ, եւ
ոչ պահեցեր զհրամանս իմ եւ զպատ-
ուիրանս զոր պատուիրեցի քեզ, պա-
տառելով պատառեցից զթագաւորու-
թիւնդ ի ձեռանէ քումմէ, եւ տաց
12 զդա ծառայի քում ։ Բայց ի քո աւուրս
ոչ արարից զայն վասն Դաւթի հօր քո,
այլ ի ձեռանէ որդւոյ քո առից զդա ։
13 Սակայն զամենայն թագաւորութիւնդ ոչ
առից. զաւազան մի տաց որդւոյ քում
վասն Դաւթի ծառայի իմոյ եւ վասն
Երուսաղեմի քաղաքի զոր ընտրեցի ։
14 Եւ յարոյց Տէր սատան Սողոմոնի
[3]զԱդեր զԵդոմայեցի ի զաւակէ թա-
15 գաւորութեանն Եդովմայեցւոց ։ Եւ ե-
ղեւ [4]ի սատակել Դաւթի զԵդոմ", յեր-
թալ Յովաբայ իշխանի զօրուն թաղել
զվիրաւորսն, զի կոտորեցին զամենայն
16 արու յԵդոմ. Զի վեց ամիս նստաւ
անդ Յովաբ եւ ամենայն Իսրայէլ [2]յԵ-
դոմ, մինչեւ սատակեաց զամենայն
17 արու Եդովմայեցւոց. Եւ փախեաւ
[5]Ադեր ինքն եւ ամենայն արք Եդովմա-
յեցիք ի ծառայից հօր նորա եւ մտին
յԵգիպտոս. եւ [5]Ադեր մանուկ փոքր
18 էր ։ Եւ յարեան [6]արքն ի քաղաքէ ան-
տի Մադիամու" եւ եկին ի Փարան, եւ
առին ընդ իւրեանս արս ի Փարանէ եւ
եկին յԵգիպտոս առ Փարաւոն արքայ
Եգիպտացւոց, [2]եւ եմուտ Ադեր առ
Փարաւոն ." եւ ետ նմա տուն եւ կար-
գեաց նմա հաց, եւ ետ նմա զետին ։
19 Եւ եգիտ [5]Ադեր շնորհս առաջի Փարա-
ւոնի յոյժ, եւ ետ նմա կին զքոյր կնոջ
20 իւրոյ՝ զքոյր [7]Թեկեմինայ մեծի ։ Եւ
ծնաւ քոյրն Թեկեմինայ Ադերայ" զԳա-
նեբաթ զորդի նորա. եւ սնոյց զնա
[8]Թեկեմինա ի մէջ որդւոցն Փարաւոնի.
եւ էր Գանեբաթ ի տան Փարաւոնի ի
21 մէջ որդւոցն Փարաւոնի ։ Եւ լուաւ
[5]Ադեր յԵգիպտոս եթէ ննջեաց Դաւիթ
ընդ հարս իւր, եւ եթէ մեռաւ Յովաբ
իշխան զօրուն. եւ ասէ [5]Ադեր ցՓա-
րաւոն, Արձակեա զիս եւ դարձայց
22 յերկիր իմ ։ Եւ ասէ Փարաւոն [9]ցԱդեր,
Զի՞նչ պակաս է քեզ առ իս զի խնդրես
երթալ յերկիր քո. եւ ասէ [10]ցնա Ադեր,
Ոչ" արձակելով արձակեսցես զիս. [2]եւ
դարձաւ Ադեր յերկիր իւր ։"
23 Եւ յարոյց [11]Տէր սատան Սողոմոնի
զԹաղան զորդի Եղիադայ, որ փախեաւ
յԱդրաազարայ արքայէ Սուբայ ի տեառ-
24 նէ իւրմէ ։ Եւ ժողովեցան առ նա արք,
եւ էր իշխան գնդին ի կոտորել զնոսա
Դաւթի. եւ գնացին ի Դամասկոս եւ
նստան ի նմա. եւ [12]թագաւորեաց ի
25 Դամասկոս ։ Եւ եղեւ հակառակ Իսրա-
յէլի զամենայն աւուրս Սողոմոնի. [13]այս
է չարութիւն Ադերայ". եւ ծանրացա-
ւումն եղեւ Իսրայէլի, եւ թագաւոր-
եաց յերկրին [14]Եդոմայ ։
26 Եւ Յերոբովամ որդի Նաբատայ Եփ-
րաթացի ի Սարիրայ, եւ անուն մօր
նորա Սարուա կին այրի, [2]եւ նա էր
որդի կնոջ այրւոյ" ծառայ Սողոմոնի.
27 եւ ամբարձ զձեռն իւր յարքայ ։ Եւ այն
իրք էին զի վերացոյց զձեռն իւր յար-
քայ [2]Սողոմոն. արքայ" Սողոմոն շինեաց
[15]զբարձաւանդակն, եւ ելից զխրամ
28 քաղաքին Դաւթի հօր իւրոյ. Եւ այրն
Յերոբովամ հզօր զօրութեամբ. իբրեւ
ետես Սողոմոն զպատանեակն եթէ
այր գործոյ է, կացոյց զնա ի վերայ
հարկաց բեռնակրաց տանն Յովսեփայ ։
29 Եւ եղեւ ի ժամանակին յայնմիկ եւ ել
Յերոբովամ յԵրուսաղեմէ, եւ եգիտ
զնա Աքիա Սիլովնացի մարգարէ ի ճա-
նապարհի [2]եւ մեկուսացոյց զնա ի ճա-
նապարհէն". եւ Աքիա զգեցեալ էր
հանդերձ նոր. եւ երկոքեան ի դաշ-
30 տին ։ Եւ բուռն եհար Աքիա զհանդեր-
ձէն իւրմէ զնորոյ որ ի վերայ իւր,
եւ պատառեաց զնա յերկոտասան կա-
31 պերտս ։ Եւ ասէ ցՅերոբովամ, Առ դու
քեզ զտասն կապերտսդ. զի այսպէս
ասէ Տէր Աստուած Իսրայէլի, Ահա ես
պատառեցից զթագաւորութիւնն ի ձե-
ռաց Սողոմոնի, եւ տաց քեզ զտասն
32 գաւազանսն ։ Եւ [16]երկու գաւազանքն
եղիցին" նորա վասն Դաւթի ծառայի ի-
մոյ, եւ վասն Երուսաղեմի քաղաքի

[1]Եբր. նա ոչ պահեաց [2]Յեբր. պակաս [3]Եբր. զԱդադ [4]Եբր. ի լինել Դաւթի յԵդոմ [5]Եբր. Ադադ [6]Եբր. ի Մադիանայ [7]Եբր. Թաշփենեսի տիկնոջ. (20) Եւ ծնաւ նմա քոյրն Թաշփենեսի [8]Եբր. Թաշփենէս.

[9]Եբր. ցԱդադ [10]Եբր. Ոչինչ. այլ [11]Եբր. Աստուած [12]Եբր. թագաւորեցին [13]Կամ, թող զչարութիւնն Ադադայ [14]Եբր. Ասորւոց [15]Եբր. զՄելովն, տես Գլ. Թ. 15 ։ [16]գաւազան (ցեղ) մի եղիցի

զոր ընտրեցի յամենայն ցեղիցն Իսրա-
33 յէլի։ Փոխանակ զի [1]եթող զիս, եւ եր-
կիր եպագ Աստարտայ զարշելւոյ Սի-
դոնացւոց, եւ Քամովսայ կռոց Մովա-
բայ, եւ Մելքողմայ [2]զազրութեան որդ-
ւոցն Ամոնայ. եւ ոչ [3]գնաց ի ճանա-
պարհս իմ առնել ուղղութիւն առաջի
իմ, եւ զճշմարտութիւնս եւ զպատուի-
րանս իմ իբրեւ զԴաւիթ զհայր իւր։
34 Եւ ոչ առից զամենայն թագաւորու-
թիւնն ի ձեռանէ նորա, [4]զի հակառա-
կութեամբ կացից հակառակ նմա զա-
մենայն աւուրս կենաց նորա, վասն
Դաւթի ծառայի իմոյ զոր ընտրեցի, որ
պահեաց զպատուիրանս իմ եւ զճշմար-
35 տութիւնս։ Եւ առից զթագաւորութիւնն
ի ձեռանէ [5]որդւոյ, եւ տաց քեզ զտասն
36 գաւազանսն. Եւ որդւոյ նորա տաց
[6]զերկուս գաւազանսն, վասն մնալոյ
ճրագի ծառայի իմում Դաւթի զամե-
նայն աւուրս առաջի իմ յԵրուսաղէմ
քաղաքի զոր ընտրեցի դնել զանուն իմ
37 անդ։ Եւ զքեզ առից եւ թագաւորես-
ցես որպէս եւ ցանկայ անձն քո. եւ
դու եղիցես թագաւոր ի վերայ Իսրա-
38 յէլի։ Եւ եղիցի եթէ պահեսցես զամե-
նայն ինչ զոր ես պատուիրեմ քեզ, եւ
գնասցես ի ճանապարհս իմ եւ արաս-
ցես ուղղութիւն առաջի իմ, զպահել
պատուիրանաց իմոց եւ հրամանաց ի-
մոց, որպէս արար Դաւիթ ծառայ իմ,
եւ եղէց ընդ քեզ, եւ շինեցից քեզ
տուն հաւատարիմ որպէս շինեցի Դաւ-
39 թի. եւ տաց քեզ զԻսրայէլ։ Եւ չար-
չարեցից զզաւակն Դաւթի վասն այնո-
40 րիկ. բայց ոչ զամենայն աւուրս։ Եւ
խնդրեաց Սողոմոն սպանանել զՅերոբո-
վամ. եւ յարեաւ Յերոբովամ եւ փա-
խեաւ յԵգիպտոս առ Սուսակիմ արքայ
Եգիպտացւոց. եւ էր յԵգիպտոս մին-
չեւ մեռաւ Սողոմոն։
41 Եւ մնացորդք բանիցն Սողոմոնի եւ
ամենայն ինչ զոր արար եւ ամենայն
իմաստութիւն նորա ո՞չ ահաւասիկ գրեալ
42 է ի գիրս բանից Սողոմոնի։ Եւ աւուրք
զորս թագաւորեաց Սողոմոն յԵրուսա-
ղէմ ի վերայ ամենայն Իսրայէլի ամք
43 քառասուն։ Եւ ննջեաց Սողոմոն ընդ
հարս իւր, եւ թաղեցին զնա ի քաղա-
քի Դաւթի հօր իւրոյ եւ թագաւորեաց
Ռոբովամ որդի նորա ընդ նորա։

## ԳԼ. ԺԲ

1 Եւ չոգաւ [7]արքայ Ռոբովամ ի Սիկիմ.
զի ի Սիկիմ գայր ամենայն Իսրայէլ
2 թագաւորեցուցանել զնա։ Եւ եղեւ իբ-
րեւ լուաւ Յերոբովամ որդի Նաբատայ,
եւ ինքն էր տակաւին յԵգիպտոս յորմէ
հետէ փախեաւ յերեսաց արքային Սողո-
մոնի, եւ [8]դարձաւ Յերոբովամ յԵգիպ-
3 տոսէ։ Եւ առաքեցին եւ կոչեցին զնա.
եւ եկն Յերոբովամ եւ ամենայն եկե-
ղեցին Իսրայէլի. եւ խօսեցաւ ամենայն
ժողովուրդն ընդ [7]արքային Ռոբովամայ
4 եւ ասեն, Հայր քո ծանրացոյց զլուծ
մեր, եւ դու թեթեւացո ի խիստ ծա-
ռայութենէ հօր քո եւ ի ծանր լծոյ
նորա զոր եդ ի վերայ մեր, եւ ծառա-
5 յեսցուք քեզ։ Եւ ասէ ցնոսա, Երթայք
մինչեւ յերիս աւուրս, եւ դարձջիք առ
իս. եւ գնացին։
6 Եւ խորհեցաւ արքայ Ռոբովամ ընդ
ծերսն որ կային առաջի Սողոմոնի հօր
նորա մինչդեռ կենդանի էր, եւ ասէ,
Զիա՞րդ խորհիք եւ տայցուք պատաս-
7 խանի ժողովրդեանն։ Եւ խօսեցան ընդ
նմա եւ ասեն, Եթէ յաւուր յայսմիկ լի-
նիցիս ծառայ ժողովրդեանն այսմիկ եւ
ծառայեսցես նոցա, եւ անսասցես նոցա
եւ խօսեսցիս ընդ նոսա բանս բարիս,
եղիցին քեզ ծառայք զամենայն աւուրս։
8 Եւ եթող զխորհուրդ ծերոցն զոր խոր-
հեցաւ ընդ նոսա, եւ խորհեցաւ ընդ
մանկանն մանկակցաց իւր որ կային
9 առաջի նորա, Եւ ասէ ցնոսա, Զի՞նչ
տայք խորատ, եւ տաց պատասխանի
ժողովրդեանն՝ որ խօսեցան ընդ իս եւ
ասեն, Թեթեւացո յանրոյն զոր եդ հայր
10 քո ի վերայ մեր։ Եւ խօսեցան ընդ
նմա մանկտին մանկակիցք իւր որ
կային առաջի նորա եւ ասեն, Այսպէս
խօսեսցիս յականջս ժողովրդեանն որ
խօսեցան ընդ քեզ եւ ասեն, Հայր քո
ծանրացոյց զլուծ մեր, եւ դու թե-
թեւացո ի մէնջ. այսպէս խօսեսցիս ընդ
նոսա, Ճկոյթ իմ ստուար է քան զմէջ
11 հօր իմոյ. Եւ արդ հայր իմ եդ ի վե-
րայ ձեր լուծ ծանր, եւ ես յաւելից

[1] Ոմն. թողին զիս եւ երկիր պագին Աստարտայ, տառածոյն [2] Ոմն. աստուծոյն [3] Ոմն. գնացին
[4] Ոմն. այլ կացուցից զնա իշխան [5] Ոմն. որդւոյ նորա [6] Ոմն. զմի գաւազանն

[7] Յոմն. պակասէ [8] Ոմն. բնակէր Յերոբովամ յԵգիպտոս

յանուրն ձեր․ հայր իմ խրատեաց զձեզ
գանիւք, եւ ես խրատեցից զձեզ [1]քըքովք։
12 Եւ եկն [2]ամենայն Իսրայէլ առ ար-
քայ" Ռոբովամ յաւուրն երրորդի որ-
պէս խօսեցաւ ընդ նոսա արքայ, եւ
ասէ, Դարձջիք առ իս յաւուրն երրոր-
13 դի։ Եւ պատասխանի ետ արքայ ժո-
ղովրդեանն խստութեամբ․ եւ եթող
Ռոբովամ զխորհուրդ ծերոցն զոր խոր-
14 հեցան ընդ նմա, Եւ խօսեցաւ ընդ նո-
սա ըստ խորհրդեան մանկտւոյն եւ ասէ,
Հայր իմ ծանրացոյց զանուր ձեր, եւ
ես յաւելից յանուր ձեր․ հայր իմ
խրատէր զձեզ գանիւք, եւ ես խրատե-
15 ցից զձեզ [1]քըքովք։ Եւ ոչ լուաւ ար-
քայ ժողովրդեանն, զի էր խոտորումն
ի Տեառնէ․ զի հաստատեսցէ Տէր զբան
իւր զոր խօսեցաւ ի ձեռն Աքիայ Սի-
լովնացւոյ, վասն Յերոբովամայ որդւոյ
16 Նաբատայ։ Իբրեւ տեսին ամենայն Իս-
րայէլ եթէ ոչ լուաւ նոցա արքայ, պա-
տասխանի ետ ժողովուրդն արքայի եւ
ասէ, Զի՞նչ բաժին կայ մեր ընդ Դաւ-
թի, եւ ոչ գոյ մեր ժառանգութիւն
ընդ որդւոյ Յեսսեայ․ [3]պնդեաց ի բնա-
կութիւնս" քո, Իսրայէլ, եւ արդ զու-
[4]արածեա զտունն Դաւթի". եւ գնաց
17 Իսրայէլ [3]ի բնակութիւնս իւր։ Եւ
որդւոյն Իսրայէլի որ նստէին ի քա-
ղաքս Յուդայ՝ թագաւորեաց Ռոբովամ։
18 Եւ առաքեաց արքայ Ռոբովամ զԱդո-
նիրամ հարկապետ, եւ քարկոծեցին
զնա ամենայն Իսրայէլ քարամբք եւ մե-
ռաւ։ Եւ արքայ Ռոբովամ աճապարեաց
ելանել ի կառս՝ փախչել յԵրուսաղէմ․
19 Եւ արհամարհեաց Իսրայէլ զտունն Դաւ-
թի մինչեւ ցայսօր։
20 Եւ եղեւ իբրեւ լուաւ ամենայն Իսրա-
յէլ եթէ դարձաւ Յերոբովամ, առաքե-
ցին եւ կոչեցին զնա ի ժողովուրդն, եւ
թագաւորեցուցին զնա ի վերայ Իսրա-
յէլի․ եւ ոչ ոք էր զհետ տանն Դաւթի,
բայց միայն ի գաւազանէ տանն Յու-
21 դայ [5]եւ Բենիամինի"։ Եւ Ռոբովամ ե-
մուտ յԵրուսաղէմ, եւ եկեղեցացոյց
զժողովուրդն Յուդայ եւ զգաւազանն
Բենիամինի՝ հարեւր եւ ութսուն հա-
զար երիտասարդաց պատերազմողաց՝
պատերազմել ընդ տանն Իսրայելի,
դարձուցանել զթագաւորութիւնն [6]Ռո-
բովամայ որդւոյ" Սողոմոնի։
22 Եւ եղեւ բան [7]Տեառն առ Սամեա
23 այր Աստուծոյ եւ ասէ, Խօսեաց ընդ
Ռոբովամայ որդւոյ Սողոմոնի, արքայի
Յուդայ, եւ ընդ ամենայն տանն Յու-
դայ եւ Բենիամինի, եւ ընդ մնացորդս
24 ժողովրդեանն, եւ ասասցես, Այսպէս
ասէ Տէր, Մի՛ ելանէք եւ մի՛ տայցէք
պատերազմ ընդ եղբարս ձեր ընդ որ-
դւոյն Իսրայելի, դարձցի իւրաքանչիւր
ոք ի տուն իւր, զի յինէն եղեւ բանն
այն։ Եւ լուան բանի Տեառն, եւ դա-
դարեցին յերթալոյ ըստ բանին Տեառն։
25 Եւ շինեաց Յերոբովամ զՍիկիմ ի
լերինն Եփրեմայ եւ բնակէր ի նմա․
26 եւ ել անտի եւ շինեաց զՓանուէլ։ Եւ
ասէ Յերոբովամ ի սրտի իւրում, Ահա
արդ դառնայցէ [8]թագաւորութիւնս իմ"
27 ի տունն Դաւթի։ Եթէ ելանիցէ ժո-
ղովուրդս զոհել զոհս ի տան Տեառն
յԵրուսաղէմ, եւ դառնայցէ սիրտ ժո-
ղովրդեանս այսորիկ առ [5]Տէր, եւ առ"
տէր իւրեանց Ռոբովամ արքայ Յուդայ,
եւ սպանանիցեն զիս եւ դառնայցեն
28 առ Ռոբովամ արքայ Յուդայ։ Եւ խոր-
հեցաւ արքայ, եւ չոգաւ արար երկուս
երինջս ոսկիս, եւ ասէ ցժողովուրդն,
Շատ լիցի ձեզ ելանել յԵրուսաղէմ․
ահա աստուածք քո, Իսրայէլ, որ հա-
29 նին զքեզ յերկրէն Եգիպտացւոց։ Եւ
եդ զմին ի Բեթէլ եւ զմեւսն ի Դան։
30 Եւ եղեւ բանն այն ի մեղս․ եւ երթայր
ժողովուրդն առաջի երեսաց միոյն մին-
31 չեւ ցԴան։ Եւ արար տունս ի վերայ
բարձանց․ եւ արար քուրմս [9]զմասն ինչ
ժողովրդեանն որ ոչ էին ի սանց" Ղեւեայ։
32 Եւ արար Յերոբովամ տօն յամսեանն
ութերորդի յաւուր հնգետասաներորդի
նորին ամսոյ ըստ տօնին որ յերկրին
Յուդայ, եւ [10]ել ի սեղանն զոր" արար
ի Բեթէլ զոհել երինջոյն զոր արար եւ
կացոյց ի Բեթէլ քուրմս բարձանցն
33 զոր արար․ Եւ [11]ել ի սեղանն զոր ա-
րար ի Բեթէլ, որ օր հնգետասան էր
ամսոյն ութերորդի [12]ի տօնին զոր ստեղծ
ի սրտէ իւրմէ, եւ արար տօնս որդւոցն
Իսրայելի, եւ ել ի սեղանն [13]զոհել։

[1] Կամ, կարճօք [2] Օրին․ Յերոբովամ եւ ամենայն ժողովուրդն առ [3] Օրին․ ի վրանս [4] Օրին․ տես զտուն քո, Դաւիթ [5] Յօրին․ պակասի

[6] Օրին․ ի Ռոբովամ, որդի [7] Օրին․ Աստուծոյ [8] Օրին․ թագաւորութիւնն [9] Օրին․ ի յետնոց ժողովրդեան որ ոչ էին յորդւոց [10] Կամ, եհան զոհս ի սեղանն․ Նոյնպէս [11] Կամ, եհան զոհս [12] Օրին․ յամսեանն [13] Օրին․ արկանել խունկս

## ԳԼ. ԺԳ

1 Եւ ահա այր Աստուծոյ եկն ի Յու-
դայ բանիւ Տեառն ի Բեթէլ, եւ Յե-
րոբովամ կայր ի վերայ սեղանոյն [1]խունկ
2 զանել ի վերայ": Եւ կոչեաց զսեղանն բա-
նիւ Տեառն եւ ասէ, Սեղան, սեղան,
այսպէս ասէ Տէր, Ահա որդի ծնցի տան
Դաւթի՝ Յովսիա անուն նորա, եւ զո-
հեսցէ ի վերայ քո զքուրմս բարձանցդ
որ [2]զանեն ի վերայ քո, եւ ոսկերս
3 մարդկան այրեսցեն ի վերայ քո: Եւ
ետ յաւուր յայնմիկ նշան եւ ասէ, Այս
նշան է զոր խօսեցաւ Տէր եւ ասէ,
Ահա սեղանդ պատառեսցի, եւ հեղցի
[3]պարարտութիւնդ որ ի վերայ դորա:
4 Եւ եղեւ իբրեւ լուաւ արքայ Յերո-
բովամ զբանս առնն Աստուծոյ բարբա-
ռելոյ ի վերայ սեղանոյն որ ի Բեթէլ,
ձգեաց արքայ զձեռն իւր ի սեղանոյ
անտի եւ ասէ, Կալարուք զդա. եւ ցա-
մաքեցաւ ձեռն նորա զոր ձգեաց ի նա,
եւ ոչ կարաց դարձուցանել զնա առ
5 ինքն: Եւ սեղանն պատառեցաւ եւ
հեղաւ [4]պարարտութիւնն ի սեղանոյ
անտի, ըստ նշանին զոր ետ այրն Աս-
6 տուծոյ բանիւ Տեառն: Եւ ասէ ար-
քայ Յերոբովամ ցայրն Աստուծոյ, Ա-
ղաչեա զերեսս Տեառն Աստուծոյ քո,
եւ արա աղօթս վասն իմ եւ դարձցի
ձեռն իմ առ իս. եւ աղաչեաց այրն
Աստուծոյ առաջի Տեառն, եւ դարձաւ
ձեռնն արքային առ նա, եւ եղեւ իբրեւ
7 զառաջինն: Եւ խօսեցաւ արքայ ընդ
առնն Աստուծոյ եւ ասէ, Մուտ ընդ
իս ի տուն եւ ճաշեա, եւ տաց քեզ
8 պարգեւ: Եւ ասէ այրն Աստուծոյ ցար-
քայ, Եթէ տացես ինձ զկէս տան քո,
ոչ մտից ընդ քեզ, եւ ոչ կերայց հաց,
եւ ոչ արբից ջուր ի տեղւոջս յայդմիկ.
9 Զի այսպէս պատուիրեաց ինձ Տէր բա-
նիւ եւ ասէ, Մի՛ ուտիցես հաց, եւ մի՛
ըմպիցես ջուր, եւ մի՛ [5]դառնայցես ընդ
10 նոյն ճանապարհ ընդ որ երթայցես": Եւ
գնաց զճանապարհ իւր, այլ ոչ ընդ
նոյն ճանապարհ ընդ որ եկն [6]գնաց
ի Բեթելայ":
11 Եւ մարգարէ մի ծեր բնակեալ էր ի
Բեթէլ, եւ եկին որդիք նորա եւ պատ-
մեցին նմա զամենայն զգործսն զոր ա-
րար այրն Աստուծոյ յաւուր յայնմիկ
ի Բեթէլ, եւ զբանսն զոր խօսեցաւ ընդ
արքային, եւ [7]դարձուցին զերեսս" հօրն
12 իւրեանց: Եւ խօսեցաւ ընդ նոսա հայրն
նոցա եւ ասէ, Ընդ ո՞ր ճանապարհ
գնաց. եւ ցուցին նմա որդիք նորա
զճանապարհն ընդ որ գնաց այրն Աս-
13 տուծոյ որ եկեալ էր ի Յուդայ: Եւ ա-
սէ ցորդիս իւր, Կազմեցէք զէշն. եւ
14 կազմեցին նմա էշ, եւ ել ի նա. Եւ
գնաց զհետ առնն Աստուծոյ, եւ եգիտ
զնա նստեալ ընդ կաղնւովն, եւ ասէ
ցնա, Եթէ դո՞ւ իցես այրն Աստուծոյ
15 եկեալ ի Յուդայ. եւ ասէ, Ես եմ: Եւ
ասէ ցնա, Եկ ընդ իս ի տուն, եւ կեր
16 հաց: Եւ ասէ, Ոչ կարեմ դառնալ ընդ
քեզ եւ ոչ գալ ընդ քեզ, եւ ոչ կե-
րայց հաց եւ ոչ արբից ջուր ի տեղւոջս
17 յայդմիկ. Զի այնպէս հրաման տուեալ
է ինձ բանիւ Տեառն եւ ասացեալ, թէ
Մի՛ ուտիցես անդ հաց, եւ մի՛ ըմպի-
ցես ջուր, եւ մի՛ դառնայցես ընդ նոյն
18 ճանապարհ ընդ որ երթայցես: Եւ ասէ
ցնա, Եւ ես մարգարէ եմ իբրեւ զքեզ.
եւ հրեշտակ Տեառն խօսեցաւ ընդ իս
եւ ասէ, Դարձո զնա առ քեզ ի տուն
քո, եւ կերիցէ հաց եւ արբցէ ջուր.
եւ ստեաց նմա:
19 Եւ դարձոյց զնա ընդ իւր, եւ եկեր
20 հաց ի տան նորա, եւ արբ ջուր: Եւ
լինէր մինչդեռ նստէին նոքա ի սեղանն,
եղեւ բան Տեառն առ մարգարէն որ
21 դարձոյց զնա, Եւ խօսեցաւ ընդ առնն
Աստուծոյ եկելոյ ի Յուդայ եւ ասէ,
Այսպէս ասէ Տէր, Փոխանակ զի դառ-
նացուցեր զբանն Տեառն, եւ ոչ պահե-
ցեր զպատուէրն զոր պատուիրեաց քեզ
22 Տէր Աստուած քո, Եւ դարձար, եւ կե-
րար հաց եւ արբեր ջուր ի տեղւոջդ
յայդմիկ զորմէ խօսեցաւ ընդ քեզ եւ
ասէ, Մի՛ ուտիցես հաց եւ մի՛ ըմպի-
ցես ջուր, արդ մի՛ մտցէ մարմին քո ի
գերեզման հարց քոց:
23 Եւ եղեւ յետ ուտելոյն նորա հաց եւ
ըմպելոյ ջուր, հանդերձեաց զէշ մարգա-
24 րէին. Եւ դարձաւ եւ գնաց, եւ եգիտ
զնա առեւծ ի ճանապարհին, եւ սպան
զնա. եւ էր մարմին նորա ընկեցեալ ի
ճանապարհին, եւ էշն կայր առ նմա,

[1]Եբր. արկանել խունկս [2]Եբր. արկանեն խունկս [3]Եբր. մոխիրդ [4]Եբր. մոխիրն [5]Եբր. դառնայցես ընդ ճանապարհն ընդ որ եկիր [6]Եբր. ի Բեթէլ

[7]Եբր. պատմեցին

25 եւ առեւծն կայր առ մարմնին ։ Եւ ահա
արք անցաւորք տեսին մեռեալ ընկե-
ցեալ ի ճանապարհին , եւ առեւծն կայր
առընթեր մեռելոյն . եւ մտին եւ խօ-
սեցան ի քաղաքին ուր մարգարէն ծեր
26 բնակեալ էր ։ Իբրեւ լուաւ[1] որ դարձոյցն
զնա ի ճանապարհէն , ասէ , Այն այրն
Աստուծոյ է որ դառնացոյց զբանն Տեառն.
եւ ետ զնա Տէր առիւծու եւ եբեկ զնա,
եւ սպան զնա ըստ բանին Տեառն զոր
27 խօսեցաւ ընդ նմա ։ Եւ խօսեցաւ ընդ
որդիսն իւր եւ ասէ , Համետեցէք զէշն.
28 եւ համետեցին ։ Եւ գնաց եւ եգիտ
զմարմինն նորա ընկեցեալ ի ճանապարհին.
եւ էշն եւ առեւծն կային առ մարմնին.
եւ ոչ եկեր առեւծն զմարմին առնն Աս-
29 տուծոյ , եւ ոչ եբեկ զէշն ։ Եւ առ մար-
գարէն զմարմին առնն Աստուծոյ , եւ եդ
զնա ի վերայ իշոյն , եւ դարձոյց զնա եւ
եկն ի քաղաք [2]մարգարէին ծերոյ" կո-
30 ծել եւ թաղել զնա . Եւ [3]ցածոյց զդին
նորա մարգարէն ի թաղել զնա" ի գե-
րեզմանի իւրում . եւ կոծեցան զնա եւ
31 ասեն , Վա՜յ եղբայր ։ Եւ եղեւ յետ կո-
ծելոյն զնա , խօսեցաւ ընդ որդիսն իւր
եւ ասէ , Եթէ մեռանիցիմ , թաղեսջիք
զիս յայսմ գերեզմանի ուր թաղեցաւ
այրս Աստուծոյ , առ ոսկերս դորա դի-
ջիք [4]զիս , զի ապրեսցին ոսկերք իմ ընդ
32 ոսկերս դորա". Զի լինելով լինիցի բանն
զոր խօսեցաւ բանիւ Տեառն ի վերայ
սեղանոյն ի Բեթէլ , եւ ի վերայ տանց
բարձանց որ [5]ի Սամարիա ։
33 Եւ յետ բանիցս այսոցիկ ոչ դարձաւ
Յերոբովամ [6]ի չարեաց իւրոց". եւ դար-
ձաւ եւ արար [7]ի մասնէ ժողովրդեանն
քուրմս բարձանց . որ կամէր լնոյր զձեռս
34 իւր , եւ լինէր քուրմ բարձանց ։ Եւ եղեւ
բանն այն ի մեղս տանն Յերոբովամայ,
եւ ի սատակումն եւ յապականութիւն
յերեսաց երկրին ։

## ԳԼ . ԺԴ

1 Ի ժամանակին յայնմիկ հիւանդացաւ
2 Աբիա որդի Յերոբովամայ ։ Եւ ասէ Յե-
րոբովամ ցկին իւր , Արի եւ այլակեր-
պեա , եւ մի՛ գիտասցեն թէ դու կին
Յերոբովամայ իցես , եւ երթիցես ի
Սելով . ահա անդ է Աքիա մարգարէ .
նա խօսեցաւ վասն իմ թագաւորել ի
3 վերայ ժողովրդեանս այսորիկ . Եւ ա՛ռ
ի ձեռին քո [8]առնն Աստուծոյ" հաց , եւ
բլիթս [9]որդւոց նորա , եւ չամիչ" եւ
սափոր մի մեղու , եւ երթիցես առ նա,
եւ պատմեսցէ քեզ զինչ լինելոց իցէ
4 մանկանն ։ Եւ արար այնպէս կինն Յե-
րոբովամու , եւ յարեաւ եւ գնաց ի Սե-
լով , եւ եմուտ ի տուն Աքիայ . եւ
այրն ծերացեալ էր ի տեսանելոյ . եւ վատ-
եալ աչք իւր ի ծերութենէ իւրմէ ։
5 Եւ ասէ Տէր ցԱքիա , Ահա կինն Յերո-
բովամայ գայ հարցանել բան ի քէն վասն
որդւոյ իւրոյ , զի հիւանդ է . զայս
ինչ եւ զայս ասասցես նմա . եւ [10]եղեւ
ի մտանելն նորա , եւ ինքն յանծանօթս
6 [11]լինէր ։ Եւ եղեւ իբրեւ լուաւ Աքիա
զձայն ոտից նորա , ի մտանելն նորա
[12]եւ ի բանալ", ասէ , Մուտ , կին Յերո-
բովամու . ընդէ՞ր իցէ այդ զի յան-
ծանօթս լինիս . եւ ես եմ առաքեալ
7 առ քեզ խստութեամբ ։ Երթ եւ ասա
ցՅերոբովամ , Այսպէս ասէ Տէր Աս-
տուած Իսրայէլի , Փոխանակ զի բարձ-
րացուցի զքեզ ի միջոյ ժողովրդեանդ ,
եւ ետու զքեզ յառաջնորդ ի վերայ ժողո-
8 վրդեան իմոյ Իսրայէլի , Եւ պատառեցի
զթագաւորութիւնն ի տանէն Դաւթի ,
եւ ետու զնա քեզ , եւ ոչ եղեր իբրեւ
զծառայ իմ Դաւիթ որ պահեաց զպա-
տուիրանս իմ , եւ եկն զկնի իմ ամենայն
սրտիւ իւրով առնել ուղղութիւն առա-
9 ջի իմ , Եւ չարացար առնել քան զամե-
նեսին որ եղեն յառաջ քան զքեզ , եւ
գնացեր եւ արարեր քեզ աստուածս
օտարս եւ ձուլածոյս բարկացուցա-
նել զիս , եւ զիս ընկեցեր յետս ի մար-
10 մնոյ քումմէ , Վասն այսորիկ ես ածից
չարիս ի վերայ տանն Յերոբովամայ ,
եւ սատակեցից զՅերոբովամայ որ մի-
զիցէ զորմով , կծկեալ եւ լքեալ ի մէջ
Իսրայէլի . եւ հաւաքեցից զհետ տանն
Յերոբովամայ , որպէս հաւաքիցի աղբ ,
11 մինչեւ սպառել զնա ։ Զզինեալսն Յե-
րոբովամու ի քաղաքի կերիցեն շունք ,
եւ զմեռեալս յանդի՝ կերիցեն թռչունք
12 երկնից . զի Տէր խօսեցաւ ։ Եւ դու ա-
րի գնա ի տուն քո , եւ ի մտանել ոտից
13 քոց ի քաղաքն՝ մեռցի մանուկն . Եւ

---

[1] Եբրայեցին յաւելու , մարգարէն [2] Եբր․ մարգարէն ծեր [3] Եբր․ եդ զդին նորա [4] Եբր․ զոսկերս իմ [5] Եբր․ ի քաղաքս Սամարիայ [6] Եբր․ ի ճանապարհէ իւրմէ չարէ [7] Եբր․ ի յետնոց

[8] Եբր․ տասն [9] Յեբր․ գաղաթ [10] Եբր․ եղիցի [11] Եբր․ իցէ [12] Եբր․ ընդ դուռնն

կոծեսցին զնա ամենայն Իսրայէլ, եւ
թաղեսցեն զնա. զի նա միայն Յերո-
բովամայ մտցէ ի գերեզման. զի գտաւ
ի նմա բան բարի վասն Տեառն Աստու-
ծոյ Իսրայելի ի տան Յերոբովամայ։
14 Եւ յարուսցէ Տէր իւր թագաւոր ի վե-
րայ Իսրայելի, որ հարցէ զտունն Յե-
րոբովամայ յաւուր յայսմիկ. եւ արդ
15 զի՞նչ եւս։ Հարցէ Տէր զԻսրայէլ որ-
պէս շարժի եղէգն ի ջուր, եւ խլեսցէ
Տէր զԻսրայէլ յերկրէս բարութեան
յայսմանէ զոր ետ հարց նոցա, եւ հո-
սեսցէ զնոսա յայնկոյս Գետոյն, փո-
խանակ զի արարին իւրեանց անտառս
16 բարկացուցանել զՏէր. Եւ մատնեսցէ
Տէր զԻսրայէլ վասն մեղացն Յերոբո-
վամու, որ մեղաւ եւ մեղոյց զԻսրայէլ։
17 Եւ յարեաւ կինն Յերոբովամու, եւ
գնաց [1]ի Սարիրա. եւ եղեւ իբրեւ ե-
մուտ առաջի դրանն տանն, մեռաւ մա-
18 նուկն։ Եւ կոծեցան զնա, եւ թաղե-
ցին ամենայն Իսրայէլ ըստ բանին
Տեառն զոր խօսեցաւ ի ձեռն ծառայի
իւրոյ Աքիայ մարգարէի։
19 Եւ մնացորդք բանից Յերոբովամայ,
թէ որչափ պատերազմեցաւ, եւ որչափ
թագաւորեաց, ահա գրեալ են ի գիրս
բանից աւուրց թագաւորացն Իսրայելի։
20 Եւ աւուրք զորս թագաւորեաց Յերոբո-
վամ, ամք քսան եւ երկու. եւ ննջեաց
ընդ հարս իւր, եւ թագաւորեաց Նաբատ
որդի նորա ընդ նորա։
21 Եւ Ռոբովամ որդի Սողոմոնի թա-
գաւորեաց ի վերայ Յուդայ. որդի քա-
ռասուն եւ մի ամաց Ռոբովամ ի թա-
գաւորել իւրում, եւ եւթնուտասն ամ
թագաւորեաց յԵրուսաղէմ քաղաքի՛
զոր ընտրեաց Տէր դնել զանուն իւր
անդ յամենայն ցեղից Իսրայելի. եւ
անուն մօր նորա Նաամա Ամոնացի։
22 Եւ արար [2]Ռոբովամ չար առաջի Տեառն,
եւ [3]նախանձեցաւ ընդ ամենայն զոր
արարին հարք նորա, եւ ըստ մեղաց
23 նոցա" զոր մեղան։ Եւ շինեցին նոքա
իւրեանց բարձունս եւ [4]անտառս ի վե-
րայ ամենայն բլրոյ բարձու, եւ ի ներ-
24 քոյ ամենայն վարսաւոր ծառոց։ Եւ
[5]նուէրք եղեն" յերկրին, եւ արարին
յամենայն պղծութեանց ազգացն զորս
եբարձ Տէր յերեսաց որդւոցն Իսրայելի։
25 Եւ եղեւ ի հինգերորդ տարւոջն յորում
թագաւորեաց Ռոբովամ՝ ել Սուսակիմ
արքայ Եգիպտոսի ի վերայ Երուսաղե-
26 մի, Եւ առ [6]զամենայն զգանձս" տանն
Տեառն եւ զգանձս տանն արքայի, եւ
[7]զնիզակսն ոսկիս զոր ա՛ռ Դաւիթ ի
ձեռաց Ադրաազարայ արքայի Սուբայ,
եւ տարաւ յԵրուսաղէմ զամենայն զոր
առ. եւ առ զվահանս" ոսկիս զոր արար
27 Սողոմոն։ Եւ արար արքայ Ռոբովամ
փոխանակ նոցա [8]զէնս պղնձիս. եւ
[9]զիմեցին ի վերայ նոցա զօրագլուխք"
սուրհանդակացն որ պահէին զդրունս
28 տանն արքայի։ Եւ լինէր յորժամ մտա-
նէր արքայ ի տունն Տեառն, բառնա-
յին [10]զայն սուրհանդակքն եւ [11]յեցու-
ցանէին զնոսա ի թեւէ" սուրհանդակացն։
29 Եւ մնացորդք բանիցն Ռոբովամայ
եւ ամենայն ինչ զոր արար, ո՞չ ահա-
նիկ գրեալ են ի գիրս բանից աւուրց
30 թագաւորացն Յուդայ։ Եւ պատերազմ
էր ի մէջ Ռոբովամայ եւ ի մէջ Յերո-
31 բովամայ զամենայն աւուրս։ Եւ ննջեաց
Ռոբովամ ընդ հարս իւր եւ թաղեցաւ ընդ
հարս իւր ի քաղաքի Դաւթի. եւ անուն
մօր նորա Նաամա Ամոնացի. եւ թա-
գաւորեաց Աբիու որդի նորա ընդ նորա։

## Գլ. ԺԵ

1 Եւ յամին ութուտասներորդի թագաւո-
րութեանն Յերոբովամայ որդւոյ Նա-
բատայ թագաւորէ Աբիու [12]որդի Ռո-
2 բովամայ" ի վերայ Յուդայ։ Եւ երեք
ամ թագաւորեաց ի վերայ Երուսաղե-
մի. եւ անուն մօր նորա Մաաքա
3 դուստր Աբիսողոմայ։ Եւ գնաց ի մեղս
հօր իւրոյ զոր արար [13]առաջի Տեառն
Աստուծոյ իւրոյ", եւ ոչ էր սիրտ նորա
կատարեալ ընդ Տեառն Աստուծոյ իւ-
րոյ իբրեւ զսիրտն Դաւթի հօր իւրոյ։
4 Զի [14]ի ձեռն Դաւթի ետ նմա Տէր Աս-
տուած [15]մնացորդ յԵրուսաղէմ, զի կա-
ցուսցէ զորդի նորա յետ նորա, եւ հաստա-
5 տեսցէ զԵրուսաղէմ. Որպէս արար Դա-
ւիթ ուղղութիւն առաջի Տեառն, եւ ոչ

[1] Եբր. եւ եկն ի Թերսա [2] Եբր. Յուդայ [3] Եբր. նախանձեցուցին զնա ամենայնիւ առաւել քան զոր արարին հարքն նոցա մեղօք իւրեանց [4] Եբր. արձանս և անտառս [5] Եբր. իգացեալս գոյր

[6] Եբր. զգանձս [7] Եբր. առ զամենայն, եւ առ զամենայն ասպարսն [8] Եբր. ասպարս [9] Եբր. յանձն արար զնոսա ի ձեռս զօրագլխաց [10] Եբր. զնոսա [11] Եբր. բերէին զնոսա այսրէն ի սենեակ [12] Եբր. [illegible] [13] Եբր. յառաջ քան զնա [14] Եբր. վասն [15] Եբր. ճրագ

*խոտորեցաւ յամենայնէ զոր պատուիրեաց նմա զամենայն աւուրս կենաց իւրոց, բաց ի բանին Ուրիայ Քետա-*
6 *ցւոյ։ Եւ պատերազմ էր ի մէջ [1]Աբիայ եւ ի մէջ Յերոբովամայ զամենայն աւուրս կենաց նորա։*
7 *Եւ մնացորդք բանից Աբիայ եւ ամենայն ինչ զոր արար, ո՞չ ահաւասիկ գրեալ են ի գիրս բանից աւուրց թագաւորացն Յուդայ. եւ պատերազմ էր ի մէջ Աբիայ եւ ի մէջ Յերոբովամայ։*
8 *Եւ ննջեաց Աբիու ընդ հարս իւր, եւ թաղեցաւ ի քաղաքի Դաւթի. եւ թագաւորէ Ասա որդի նորա ընդ նորա։*
9 *Եւ յամի քսաներորդի Յերոբովամայ արքային Իսրայէլի թագաւորէ Ասա ի*
10 *վերայ Յուդայ. Եւ քառասուն եւ մի ամ թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ անուն մօր նորա Մաաքա դուստր Աբե-*
11 *սողոմայ։ Եւ արար Ասա ուղղութիւն առաջի Տեառն իբրեւ զԴաւիթ զհայր*
12 *իւր։ Եւ եբարձ [2]զնուէրս յերկրէն, եւ ջնջեաց զամենայն [3]խարդախութիւնս*
13 *զոր արարին հարք նորա։ Եւ զՄաաքա զմայր իւր ի բաց արար ի տիկնութենէ. քանզի արար [4]ժողով յանտառին իւրում." եւ կոտորեաց Ասա [5]զամբոխս նորա, եւ այրեաց հրով ի հեղեղատին*
14 *Կեդրոնի։ Սակայն զբարձաւանսն ոչ եբարձ. բայց սիրտ նորա կատարեալ էր ընդ*
15 *Տեառն զամենայն աւուրս իւր։ Եւ եբեր [6]զսրբութիւն հօր իւրոյ եւ զսրբութիւն զիւր եմոյծ" ի տուն Տեառն, արծաթ եւ ոսկի եւ անօթս։*
16 *Եւ պատերազմ էր ի մէջ Ասայի եւ ի մէջ Բաասայ արքայի Իսրայէլի զամե-*
17 *նայն աւուրս նոցա։ Եւ ել Բաասա արքայ Իսրայէլի ի վերայ Յուդայ, եւ շինեաց զՌամա, զի մի՛ լիցի ելանել եւ*
18 *մտանել Ասայի արքայի Յուդայ։ Եւ առ Ասա զամենայն արծաթն եւ զոսկի գտեալ ի գանձս տանն Տեառն եւ ի գանձս տան թագաւորին, եւ ետ զայն ի ձեռս ծառայից իւրոց, եւ առաքեաց զնոսա Ասա արքայ առ [7]որդին Ադերայ որդւոյ Աբենրայիմայ որդւոյ Ազայելի" արքային Ասորւոց բնակելոյ ի Դամասկոս՝*
19 *եւ ասէ, [8]Ուխտեա ուխտ" ընդ իս եւ ընդ քեզ, եւ ի մէջ հօր իմոյ եւ ի մէջ հօր քո. ահաւասիկ առաքեցի քեզ պատարագ արծաթ եւ ոսկի, եւ լոյծ զուխտ քո որ ընդ Բաասայ արքայի Իսրայէլի,*
20 *եւ գնասցէ յինէն։ Եւ լուաւ [9]որդի Ադերայ" արքային Ասայի, եւ առաքեաց [10]զիշխանսն իւր" ի քաղաքսն Իսրայէլի. եւ եհար զԱյին եւ զԴան եւ [11]զԱբէլ տանն Մաաքայ", եւ զամենայն զՔեներէթ մինչեւ յամենայն երկիրն Նեփթա-*
21 *ղիմայ։ Եւ եղեւ իբրեւ լուաւ Բաասա, դադարեաց ի շինելոյ զՌամա, եւ դար-*
22 *ձաւ ի Թերսա։ Եւ արքայ Ասա պատուիրեաց ամենայն Յուդայ [12]որ էին յԵնակիմ", զի առցեն զքարինսն Ռամայ եւ զփայտ նորա, զոր շինեաց Բաասա. եւ շինեաց նովօք արքայ Ասա [13]զամենայն բլուր Բենիամինի եւ զդիտանոցն"։*
23 *Եւ մնացորդք բանիցն Ասայի եւ ամենայն զօրութիւն նորա, եւ ամենայն ինչ զոր արար, եւ [14]քաղաքսն զոր" շինեաց, ո՞չ ահաւասիկ գրեալ են ի գիրս բանից աւուրց թագաւորացն Յուդայ. բայց ի ժամանակի ծերութեան իւրոյ ցաւե-*
24 *ցին ոտք իւր։ Եւ ննջեաց Ասա ընդ հարս իւր, եւ թաղեցաւ ընդ հարս իւր ի քաղաքին Դաւթի. եւ թագաւորէ Յովսափատ որդի նորա ընդ նորա։*
25 *Եւ [15]Նաբատ որդի Յերոբովամայ թագաւորէ յԻսրայէլի, յամին երկրորդի Ասայի արքայի Յուդայ. եւ թագաւորեաց ի վերայ Իսրայէլի ամս երկուս.*
26 *Եւ արար չար առաջի Տեառն, եւ գնաց զճանապարհ հօր իւրոյ եւ ի մեղս իւր*
27 *որովք յանցոյց զԻսրայէլ։ Եւ [16]նստաւ զնովաւ Բաասա որդի Աքիայ ի վերայ տանն" Իսաքարու, եւ եհար զնա Բաասա ի Գաբաթոնն այլազգեաց. եւ [15]Նաբատ եւ ամենայն Իսրայէլ նստէին*
28 *զԳաբաթոնաւ. Եւ սպան զնա Բաասա յամին երրորդի Ասայի արքայի Յուդայ,*
29 *եւ թագաւորեաց ընդ նորա։ Եւ եղեւ իբրեւ թագաւորեաց, եհար զամենայն տանն Յերոբովամու. եւ ոչ թողոյր զամենայն շնչաւոր տանն Յերոբովամայ, մինչեւ սատակել զնա ըստ բանին*

---

[1] Եբր. Ռոբովամայ [2] Տե՛ս Գլ. ԺԴ. 24։ [3] Եբր. կուռս [4] Եբր. պատկեր Աստարովթայ [5] Եբր. զպատկերն [6] Եբր. զնուէրս հօր իւրոյ և զնուէրս իւր [7] Եբր. Բենադադ որդի Տաբրեմոնի որդւոյ Եզիոնի

[8] Եբր. Ուխտ է [9] Եբր. Բենադադ [10] Եբր. զիշխանս զօրուն իւրոյ [11] Եբր. զԱբէլ-Բեթմաաքայ [12] Եբր. անխտիր [13] Եբր. զԳաբաա Բենիամինի և զՄասփա [14] Եբր. քաղաքսն զոր [15] Եբր. Նադաբ [16] Եբր. դաւ գործեաց նմա Բաասա որդի Աքիայ ի տանէն

Տեառն զոր խօսեցաւ ի ձեռն ծառայի
30 իւրոյ Աքիայ Սելովնացւոյ, Վասն ամե-
նայն մեղացն Յերոբովամայ որ մե-
ղաւ եւ յանցոյց զԻսրայէլ ի դայրացու-
ցանել իւրում, որովք դայրացոյց զՏէր
Աստուած Իսրայելի։
31 Եւ մնացորդք բանից [1]Նաբատայ եւ
ամենայն ինչ զոր արար, ո՞չ ահաւասիկ
գրեալ են ի գիրս բանից աւուրց թագա-
32 ւորացն Իսրայելի։ Եւ էր պատերազմ ի
մէջ Ասայի եւ ի մէջ [2]Նաբատայ ար-
քային Իսրայելի զամենայն աւուրս նոցա։
33 Եւ յամին երրորդի Ասայի արքայի
Յուդայ թագաւորէ Բաասա որդի Աքիայ
ի վերայ ամենայն Իսրայելի ի Թերսա
34 ամս քսան եւ չորս։ Եւ արար չար ա-
ռաջի Տեառն, եւ գնաց զճանապարհ
Յերոբովամայ [3]որդւոյ Նաբատայ", եւ ի
մեղս նորա որպէս յանցոյց զԻսրայէլ։

ԳԼ. ԺԶ

1 Եւ եղեւ բան Տեառն ի ձեռն Յէուայ
որդւոյ Անանեայի առ Բաասա եւ ասէ,
2 Փոխանակ զի բարձրացուցի զքեզ յերկրէ,
եւ ետու զքեզ առաջնորդ ի վերայ ժողո-
վրդեան իմոյ Իսրայելի, եւ գնացեր զճա-
նապարհն Յերոբովամու, եւ յանցուցեր
զժողովուրդ իմ զԻսրայէլ, բարկացու-
3 ցանել զիս [4]մնոտւովք իւրեանց, Ահա
ես [5]յարուցից զհետ Բաասայ եւ զհետ
տան նորա". եւ տաց զտուն քո իբրեւ
զտունն Յերոբովամայ որդւոյ Նաբա-
4 տայ։ Որ մեռանիցի Բաասայ ի քաղաքի՝
շունք կերիցեն, եւ որ մեռանիցի նորա ի
դաշտի՝ կերիցեն զնա թռչունք երկնից։
5 Եւ մնացորդք բանից Բաասայ, եւ
ամենայն ինչ զոր արար եւ զօրութիւնք
նորա, ո՞չ ահաւասիկ գրեալ են ի գիրս
բանից աւուրց թագաւորացն Իսրայելի։
6 Եւ ննջեաց Բաասա ընդ հարս իւր, եւ
թաղեցաւ ի Թերսա. եւ թագաւորէ
Եղա որդի նորա ընդ նորա, [3]յամի քսա-
7 ներորդի Ասայի արքայի։" Եւ ի ձեռն
Յէուայ որդւոյ Անանեայ մարգարէի խօ-
սեցաւ Տէր ի վերայ Բաասայ եւ ի վե-
րայ տան նորա զամենայն չարիսն զոր
արար առաջի Տեառն ի բարկացուցանել
զնա գործովք ձեռաց իւրոց. առ ի լի-
նելոյ իբրեւ զտունն Յերոբովամայ, եւ
վասն հարկանելոյ զնա։
8 Յամին քսաներորդի եւ վեցերորդի
[6]արքային Յուդայ, թագաւորեաց Եղա
որդի Բաասայ ի վերայ Իսրայելի ի Թեր-
9 սա ամս երկուս։ Եւ [7]ժողովեաց ի վե-
րայ նորա" Զամբրի ծառայ իւր՝ իշխան
կիսոյ սպառազինաց. եւ նա ըմպէր եւ
արբեալ էր ի տանն Արսայ հանդերձա-
10 պետի ի Թերսա. Եւ եմուտ Զամբրի, եւ
եհար զնա եւ սպան զնա, յամի քսա-
ներորդի եւթներորդի Ասայի արքայի
Յուդայ, եւ թագաւորեաց ընդ նորա։
11 Եւ եղեւ ի թագաւորել նորա եւ նստել
յաթոռն իւրում, եհար զամենայն տունն
Բաասայ, եւ ոչ եթող նմա որ միզիցէ
զորմով, եւ զմերձաւորս նորա եւ զբա-
12 րեկամս նորա։ Եւ ջնջեաց Զամբրի զա-
մենայն տունն Բաասայ՝ ըստ բանին
Տեառն զոր խօսեցաւ ի վերայ տանն
Բաասայ ի ձեռն Յէուայ մարգարէի.
13 Վասն ամենայն մեղացն Բաասայ՝ եւ
Եղայ որդւոյ նորա որ [8]մեղաւ, եւ որ-
պէս յանցոյց" զԻսրայէլ, բարկացուցա-
նել զՏէր Աստուած Իսրայելի մնոտւովք
իւրեանց։
14 Եւ մնացորդ բանիցն Եղայ, եւ ամե-
նայն ինչ զոր արար, ո՞չ ահաւասիկ գրեալ
են ի գիրս բանից աւուրց թագաւորացն
Իսրայելի։
15 Յամի քսաներորդի եւթներորդի Ասայի
արքայի Յուդայ, թագաւորեաց Զամբրի
աւուրս եւթն ի Թերսա. եւ բանակն
Իսրայելի ի Գաբաթոնի պաշարեալ.
16 Եւ լուաւ ժողովուրդն ի բանակի անդ՝
ասեն, Դաւաճանեցաւ Զամբրի եւ եհար
զարքայն. եւ [9]թագաւորեցուցին Իսրա-
յելի" զԱմրի զօրավար զօրուն ի վերայ
Իսրայելի յաւուր յայնմիկ ի բանակին։
17 Եւ ել Ամրի եւ ամենայն Իսրայէլ ընդ
նմա ի Գաբաթոնէ, եւ նստաւ զԹեր-
18 սաւ։ Եւ եղեւ իբրեւ ետես Զամբրի
թէ յառնուլ եղեւ քաղաքն, եմուտ ի
սենեակ մի տանն արքայի, եւ այրեաց
ի վերայ [10]նորա զտունն արքայի հրով.
19 Եւ մեռաւ վասն մեղաց իւրոց զոր ա-
րար՝ առնել չար առաջի Տեառն. եւ
գնաց զճանապարհս Յերոբովամու [3]որդ-
ւոյ Նաբատայ", եւ ի մեղս նորա զոր ա-

[1]Եբր. Նադաբայ [2]Եբր. Բաասայ [3]Յեբր. պակասի [4]Եբր. մեղօք [5]Այլուր՝ Ջնջեցից ի սպառ զԲաասա և զտուն նորա

[6]Եբր. Ասայի արքայի [7]Եբր. դաւ գործեաց նմա [8]Եբր. մեղան, և որպէս յանցուցին [9]Եբր. թագաւորեցոյց ամենայն Իսրայէլ [10]Եբր. իւր

բար որովք յանցոյց զԻսրայէլ ։
20 Եւ մնացորդք բանից Զամբրեայ, եւ
խռովքն նորա զոր խմբեցաւ, ո՞չ ահաւա-
նիկ գրեալ են ի գիրս բանից աւուրց
թագաւորացն Իսրայէլի ։
21 Յայնժամ բաժանեցաւ ժողովուրդն
Իսրայէլի. կէս ժողովրդեանն լինէր զկնի
Թամնեայ որդւոյ Գոնաթայ թագաւո-
րեցուցանել զնա, եւ կէս ժողովրդեանն
22 լինէր զկնի Ամրեայ ։ Եւ յաղթահարեաց
ժողովուրդն որ զկնի Ամրեայ, եւ պար-
տեցաւ ժողովուրդն որ զհետ Թամնեայ
որդւոյ Գոնաթայ. եւ մեռաւ Թամնի,
[1]եւ Յովրամ եղբայր նորա ի ժամանակի
յայնմիկ. եւ թագաւորեաց Ամրի յետ
23 Թամնեայ"։ Յամին երեսներորդի եւ ա-
ռաջնորդի Ասայի արքայի Յուդայ, թա-
գաւորէ Ամրի ի վերայ Իսրայէլի ամս
երկոտասան. ի Թերսա թագաւորեաց
24 ամս վեց ։ Եւ ստացաւ Ամրի զլեառնն
Սեմերոն ի Սամերայ [2]տեառնէ լերինն"
երկուց տաղանդաց արծաթոյ. եւ շի-
նեաց զլեառնն, եւ կոչեաց զանուն [3]լե-
րինն զոր շինեաց՝ յանուն Սամերեայ
տեառն լերինն՝ Սեմերոն ։
25 Եւ արար Ամրի չար առաջի Տեառն,
եւ չարացաւ քան զամենայն եղեալս
26 յառաջ քան զնա. Եւ գնաց զամենայն
ճանապարհս Յերոբովամայ որդւոյ Նա-
բատայ, եւ ի մեղս նորա որովք յան-
ցոյց զԻսրայէլ՝ ի բարկացուցանել զՏէր
Աստուած Իսրայէլի սնոտեօք իւրեանց ։
27 Եւ մնացորդք բանից Ամրեայ եւ ա-
մենայն ինչ զոր արար, եւ զօրութիւն
նորա զոր արար, ո՞չ աւանիկ գրեալ են
ի գիրս բանից աւուրց թագաւորացն
28 Իսրայէլի ։ Եւ ննջեաց Ամրի ընդ հարս
իւր, եւ թաղեցաւ ի Սամարիա. եւ թա-
գաւորեաց Աքաաբ որդի նորա ընդ նորա ։
29 Եւ Աքաաբ որդի Ամրեայ թագաւոր-
եաց ի վերայ Իսրայէլի. յամին երես-
ներորդի եւ ութերորդի Ասայի արքայի
Յուդայ թագաւորեաց Աքաաբ որդի
Ամրեայ ի վերայ Իսրայէլի ի Սամարիա
30 ամս քսան եւ երկու ։ Եւ արար Աքաաբ
որդի Ամրեայ չար առաջի Տեառն քան
զամենեսեան որ յառաջ քան զնա էին ։
31 Եւ ոչ ինչ էր նմա ընդհատ գնալ ըստ
մեղաց Յերոբովամայ որդւոյ Նաբատայ.
եւ առ կին զՅեզաբէլ դուստր Յովբա-

[1] Եբր. եւ թագաւորեաց Ամրի [2] Եբր. [illegible]
[3] Եբր. քաղաքին

ղայ արքայի Սիդոնացւոց, եւ գնաց եւ
ծառայեաց Բահաղու եւ երկիր եպագ
32 նմա ։ Եւ կանգնեաց սեղան Բահաղու
ի տան գարշելեաց նորա զոր շինեաց ի
33 Սամարիա ։ Եւ արար Աքաաբ անտառ.
եւ յաւել Աքաաբ առնել առ ի բարկա-
ցուցանել զՏէր Աստուած Իսրայէլի քան
զամենայն թագաւորս Իսրայէլի եղեալս
34 յառաջ քան զնա ։ Յաւուրս նորա շի-
նեաց Աքիէլ Բեթելացի զԵրիքով, Աբի-
րոնաւ անդրանկաւ իւրով արկ նմա հի-
մունս, եւ Սեգուբաւ կրտսերաւ իւրով
կանգնեաց զդրունս նորա, ըստ բանին
Տեառն զոր խօսեցաւ ի ձեռն Յեսուայ
որդւոյ Նաւեայ ։

ԳԼ. ԺԷ

1 Եւ ասէ Եղիա մարգարէ ի Թեզբեայ
Գաղաադու ցԱքաաբ, Կենդանի է Տէր
[2]Աստուած զօրութեանց", Աստուած Իս-
րայէլի, որոյ կացի առաջի նորա, եթէ
եղիցի յամս յայսոսիկ ցօղ կամ անձ-
րեւ, բայց եթէ բանիւ բերանոյ իմոյ ։
2 Եւ եղեւ բան Տեառն առ Եղիա եւ
3 ասէ, Գնա աստի ընդ արեւելս եւ թա-
քիցես ի հեղեղատին Քորաթու, որ է
4 յանդիման Յորդանանու. Եւ եղիցի ըմ-
պել քեզ ջուր ի հեղեղատէն, եւ հրա-
ման տաց ագռաւուց կերակրել զքեզ
5 անդ ։ Եւ գնաց եւ արար Եղիա ըստ
բանին Տեառն, եւ չոգաւ եւ նստաւ ի
հեղեղատին Քորաթայ յանդիման Յոր-
6 դանանու ։ Եւ ագռաւք բերէին նմա
հաց եւ միս ընդ առաւօտս, եւ հաց եւ
միս ընդ երեկոյս. եւ ի հեղեղատէն ըմ-
7 պէր ջուր ։ Եւ եղեւ յետ աւուրց եւ
ցամաքեցաւ հեղեղատն, զի ոչ եղեւ
անձրեւ ի վերայ երկրի ։
8 Եւ եղեւ բան Տեառն առ Եղիա եւ
9 ասէ, Արի եւ գնա ի Սարեփթա Սի-
դոնացւոց, եւ նստցես անդ. եւ ահա
պատուիրեալ է իմ անդ կնոջ միոյ այր-
10 ւոյ կերակրել զքեզ ։ Եւ յարեաւ գնաց
ի Սարեփթա ի դուռն քաղաքին, եւ ա-
հա անդ կին մի քաղէր փայտ. եւ ա-
ղաղակեաց զկնի նորա Եղիա եւ ասէ
ցնա, Առ դու ինձ սակաւ մի ջուր ա-
11 մանով եւ արբից ։ Եւ գնաց բերել. եւ
աղաղակեաց զհետ նորա Եղիա եւ ասէ,
Առցես ինձ պատառ մի հաց ի ձեռին
12 քում ։ Եւ ասէ կինն, Կենդանի է Տէր
Աստուած քո, եթէ գուցէ իմ նկանակ.

բայց եթէ որչափ բուռն մի ալեւր
ի սափորի, եւ սակաւ մի եւղ ի կամ-
փաւին. եւ ահա քաղեմ կրկուտս եր-
կուս, եւ մտից եւ արարից զայն ինձ եւ
[1]մանկանց իմոց՚՚. եւ կերիցուք զայն եւ
13 մեռցուք։ Եւ ասէ ցնա Եղիա, Քաջա-
լերեաց, մուտ եւ արա ըստ բանի քում.
այլ արասջիր նախ ինձ անտի նկանակ
մի փոքրիկ եւ բերցես ինձ, եւ ապա
14 արասցես քեզ եւ [2]մանկանց քոց՚՚։ Զի
այսպէս ասէ Տէր Աստուած Իսրայէլի,
Սափոր ալեւրն մի՛ պակասեսցէ եւ կամ-
փաւկ իւղոյն մի՛ նուազեսցէ մինչեւ յօր
տալոյ Տեառն անձրեւ ի վերայ երեսաց
15 երկրի։ Եւ գնաց կինն, եւ արար ըստ
բանին Եղիայի, եւ կերաւ նա եւ նա եւ
16 [3]որդիք նորա. Եւ յօրէ յայնմանէ սա-
փոր՚՚ ալեւրն ոչ պակասեաց, եւ կամ-
փաւկ իւղոյն ոչ նուազեցաւ ըստ բանին
Տեառն զոր խօսեցաւ ի ձեռն Եղիայի։
17 Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ հիւան-
դացաւ որդի տիկնոջ տանն, եւ էր ախտ
նորա սաստիկ յոյժ, մինչ ոչ մնաց ի
18 նմա շունչ։ Եւ ասէ ցԵղիա, Զի՞ կայ
իմ եւ քո, այր Աստուծոյ, մտեր առ
իս յիշատակել զանօրէնութիւնս իմ, եւ
19 սպանանե՞լ զորդի իմ։ Եւ ասէ Եղիա
ցկինն, Տուր ցիս զորդիդ քո. եւ առ
զնա ի գրկաց նորա, եւ եհան զնա ի
վերնատունն յորում ինքն նստէր, եւ
արար զնա ի կողմն ի վերայ մահճաց
20 իւրոց. Եւ աղաղակեաց [4]Եղիա եւ ասէ,
Ո՜հ ինձ Տէր, որ վկայդ ես այրւոյն՚՚ առ
որում ես բնակեմ, դու չարչարեցեր
21 զորդի նորա մեռուցանել։ Եւ [5]փչեաց
երիցս ի մանուկն, եւ կարդաց զՏէր
եւ ասէ, Տէր Աստուած իմ, դարձցի
22 շունչ մանկանս ի սա։ Եւ [6]եղեւ այնպէս.
եւ աղաղակեաց, եւ՚՚ լուաւ Տէր ձայնի
Եղիայի, եւ դարձաւ շունչ մանկանն ի
23 փոր նորա եւ կենդանացաւ։ Եւ ա՛ռ Ե-
ղիա զմանուկն եւ իջոյց զնա ի վերնա-
տանէ անտի ի տունն եւ ետ ցմայր իւր.
եւ ասէ Եղիա, Տես զի կենդանի է որդիդ
24 քո։ Եւ ասէ կինն ցԵղիա, Ահա արդ գի-
տացի եթէ այր Աստուծոյ ես դու, եւ
բան Տեառն ճշմարիտ է ի բերան քո։

[1]Ոմն. մանկան իմում [2]Ոմն. մանկան քում
[3]Ոմն. տուն նորա ուտէին: (16) Սափոր [4]Ոմն. առ Տէր և ասէ, Տէր Աստուած իմ, զայրի՞ն ես
[5]Ոմն. տարածեաց զանձն երիցս ի վերայ մանկանն
[6]Յոմն. պակասի

## ԳԼ. ԺԸ

1 Եւ եղեւ յետ աւուրց բազմաց եւ բան
Տեառն եղեւ առ Եղիա յամին երրորդի,
եւ ասէ, Երթ եւ երեւեաց Աքաաբու,
եւ տաց անձրեւ ի վերայ երեսաց երկ-
2 րի։ Եւ չոգաւ Եղիա երեւել Աքաաբու.
3 եւ սով սաստիկ էր ի Սամարիա։ Եւ
կոչեաց Աքաաբ զԱբդիու զհազարա-
պետ իւր. եւ Աբդիու երկիւղած էր ի
4 Տեառնէ յոյժ. Եւ եղեւ ի կոտորել Յե-
զաբելայ զմարգարէսն Տեառն, ա՛ռ Աբ-
դիու հարիւր այր մարգարէ, եւ թա-
քոյց զնոսա յիսուն յիսուն յայրի, եւ
5 կերակրեաց զնոսա հացիւ եւ ջրով։ Եւ
ասէ արքայ ցԱբդիու, Եկ շրջեսցուք
ընդ երկիր առ ամենայն աղբերբք ջրոց
եւ առ հեղեղատովք, թերեւս գտցուք
խոտ եւ ապրեցուսցուք զձիս եւ զջո-
րիս, եւ ոչ սատակեսցին յանասնոց։
6 Եւ [7]բաժանեաց իւրեանց զճանապարհն
շրջել՚՚. Աքաաբ գնաց ընդ մի ճանա-
պարհ միայն, եւ Աբդիու գնաց ընդ այլ
ճանապարհ միայն։
7 Եւ էր Աբդիու ի ճանապարհին, եւ
եկն եւ Եղիա ընդ առաջ նորա [6]միայն,
եւ աճապարեաց Աբդիու անկաւ ի վե-
րայ երեսաց իւրոց եւ ասէ, Եթէ դո՞ւ
8 իցես տէր իմ Եղիա։ Եւ ասէ Եղիա,
Ես եմ. երթ ասա տէր քո եթէ Ահա-
9 ւասիկ Եղիա։ Եւ ասէ Աբդիու, Զի՞նչ
մեղայ, զի մատնես զծառայ քո ի ձեռս
10 Աքաաբու սպանանել զիս։ Կենդանի է
Տէր Աստուած քո, եթէ իցէ ազգ կամ
թագաւորութիւն ուր ոչ առաքեաց տէր
իմ խնդրել զքեզ. եւ ասէին թէ Չէ ու-
րեք. եւ [8]այրեաց զթագաւորութիւնն
եւ զաշխարհն նորա՚՚ զի ոչ եգիտ զքեզ։
11 Եւ արդ դու ասես, թէ Երթ եւ պատմեա
12 տեառն քում թէ Ահաւասիկ Եղիա. Եւ
եղիցի եթէ ես երթայցեմ ի քէն, եւ
Հոգի Տեառն առնուցու զքեզ յերկիր
զոր ոչ գիտիցեմ, եւ մտանիցեմ պատ-
մել Աքաաբու, եւ ոչ գտանիցէ զքեզ,
եւ սպանանիցէ զիս. եւ ծառայ քո եր-
կիւղած է ի Տեառնէ ի մանկութենէ
13 իւրմէ։ Եւ ո՞չ պատմեցաւ տեառն իմում
զոր ինչ արարի ես ի կոտորել Յեզաբե-
լայ զմարգարէսն Տեառն. թաքուցի ի
մարգարէիցն Տեառն հարիւր այր՝ յիսուն

[7]Ոմն. բաժանեցին իւրեանց զերկիրն շրջել ի նմա
[8]Ոմն. երդմնեցոյց զթագաւորութիւնն և զազգն

յիսուն այր յայրի, եւ կերակրեցի զնո-
14 սա հացիւ եւ ջրով: Եւ արդ դու ասես
ցիս, Երթ եւ ասա տեառն քում թէ
Ահաւասիկ Եղիա, եւ սպանանիցէ զիս:
15 Եւ ասէ Եղիա, Կենդանի է Տէր զօրու-
թեանց, որոյ կայի առաջի նորա, զի
այսօր երեւեցայց նմա:
16 Եւ գնաց Աբդիու ընդ առաջ Աքաա-
բու եւ պատմեաց նմա. եւ ընթացաւ
Աքաաբ եւ գնաց ընդ առաջ Եղիայի:
17 Եւ եղեւ իբրեւ ետես Աքաաբ զԵղիա,
ասէ Աքաաբ ցԵղիա, եթէ Դո՞ւ իցես
18 խանգարիչն Իսրայելի: Եւ ասէ Եղիա,
Ես ոչ խանգարեմ զԻսրայէլ, այլ դու
եւ տուն հօր քո, ի թողուլ ձեր [1]զՏէր
Աստուած ձեր" եւ երթայ զհետ Բա-
19 հաղիմայցն: Եւ արդ առաքեա ժողովեա
առ իս զամենայն Իսրայէլ ի լեառն Կար-
մեղոս, եւ զմարգարէսն Բահաղու զչո-
րեքհարեւր եւ զյիսուն, [2]եւ զմարգա-
րէսն ամօթոյ զչորեքհարեւր եւ զյի-
սուն," եւ զմարգարէսն անտառաց զչո-
րեքհարեւր, որ ուտեն զսեղանն Յեզա-
20 բելայ: Եւ առաքեաց Աքաաբ ընդ ամե-
նայն Իսրայէլ, եւ ժողովեաց զմարգա-
րէսն ի լեառնն Կարմեղոս:
21 Եւ [3]մերձեցոյց Եղիա զամենայն" ժողո-
վուրդն, եւ ասէ ցնոսա Եղիա, Մինչեւ
ցե՞րբ կաղայք յերկուս հետս. եթէ Տէր է
Աստուած, երթայք զհետ նորա, եւ եթէ
Բահաղն իցէ, երթայք զհետ նորա. եւ
ոչ ետ ժողովուրդն նմա պատասխանի:
22 Եւ ասէ Եղիա ցժողովուրդն, Ես մնացեալ
եմ մարգարէ Տեառն միայն, եւ մարգարէք
Բահաղու արք չորեքհարեւր եւ յիսուն
[2]եւ մարգարէք անտառին՝ չորեքհարեւր":
23 Տացեն մեզ երկուս եզինս, եւ ընտ-
րեսցեն իւրեանց զմին, եւ յօշեսցեն եւ
դիցեն ի վերայ փայտից, եւ հուր մի՛ դի-
ցեն. եւ ես արարից զմեւս եզնն, եւ ե-
դից ի վերայ փայտից, եւ հուր ոչ մատու-
24 ցից: Եւ կարդասջիք զանուն աստուա-
ծոյն ձերոյ, եւ ես կոչեցից զանուն
Տեառն [2]Աստուծոյ իմոյ". եւ եղիցի աս-
տուած որ լուիցէ հրով՝ նա է Աստուած.
պատասխանի ետուն ամենայն ժողո-
վուրդն եւ ասեն, Բարի է բանդ [2]զոր
25 խօսեցար": Եւ ասէ Եղիա ցմարգարէսն
[4]ամօթոյ, Ընտրեցէք դուք ձեզ զուա-
րակ մի, եւ արարէք յառաջագոյն,
քանզի դուք բազում էք. եւ կարդա-
ցէք զանուն աստուածոյն ձերոյ, եւ
26 հուր մի՛ դնէք ի վերայ: Եւ առին զզուա-
րակն զոր ետ նոցա, եւ արարին. եւ
կարդացին զանուն Բահաղու յայգուէ
մինչեւ ցհասարակ օր. եւ ասէին, Լուր
մեզ, Բահաղ, [2]լուր մեզ:" եւ ոչ գոյր
բարբառ եւ ոչ ունկնդրութիւն. եւ ըն-
թանային շուրջ զսեղանովն զոր արա-
27 րին: Եւ եղեւ ի մէջօրէին եւ այպա-
նեաց զնոսա Եղիա [2]Թեզբացի եւ ասէ,
Մեծաձայն կարդացէք, զի աստուած
[5]է, թերեւս զբօսանք ինչ իցեն նմա,
եւ միանգամայն թերեւս առնիցէ հրա-
ման", կամ թէ ի քուն իցէ եւ յառնի-
28 ցէ: Եւ կարդային մեծաձայն, եւ ցտէին
ըստ օրինի իւրեանց սրով եւ գեղար-
դեամբք մինչեւ ցհեղուլ արեան ի վերայ
29 նոցա: Եւ եղեւ իբրեւ մերձեցաւ յընդե-
րեկսն, եւ մարգարէանային մինչեւ ցժա-
մանակ մատուցանելոյ զոհին, եւ ոչ գոյր
[6]ձայն. եւ խօսեցաւ Եղիա Թեզբացի
ընդ մարգարէս գարշելեացն եւ ասէ, Ի
բաց կացէք, արդ ես արարից զողջա-
կէզն իմ: Եւ ի բաց կացին եւ գնացին":
30 Եւ ասէ Եղիա ցժողովուրդն, Մատե-
րուք առ իս. եւ մատեան ամենայն
ժողովուրդն առ նա. եւ ողջացոյց զսե-
31 ղանն Տեառն զկործանեալ: Եւ ա՛ռ Ե-
ղիա երկոտասան քար ըստ թուոյ ցե-
ղիցն [7]Իսրայելի, որպէս խօսեցաւ Տէր
ընդ նմա եւ ասէ, Իսրայէլ եղիցի ա-
32 նուն քո. Եւ շինեաց [8]զքարինն յա-
նուն Տեառն, եւ արար [9]ծով որ առ-
նէր երկուց գրուաց սերմն շուրջ զսե-
33 ղանովն: Եւ եդէզ զչերտսն [2]ի վերայ սե-
ղանոյն զոր արար", եւ յօշեաց զողջա-
կէզն եւ եդէզ ի վերայ չերտիցն [2]եւ ե-
34 դէզ ի վերայ սեղանոյն". Եւ ասէ, Ա-
ռէք ինձ չորս սափորս ջրոյ, եւ հեղէք
ի վերայ ողջակիզիդ եւ ի վերայ չեր-
տիցդ. եւ ասէ, Կրկնեցէք. եւ կրկնե-
ցին. եւ ասէ, Երեքկնեցէք. եւ երեք-
35 կնեցին. Եւ գնայր ջուրն շուրջ զսե-
ղանովն, եւ [10]զծովն լցին ջրով:
36 Եւ եղեւ ի ժամու մատուցանելոյ պա-

[1]Եբր. զպատուիրանս Տեառն [2]Յեբր. դոլ—ռէ [3]Եբր. մերձեցաւ Եղիա առ ամենայն [4]Եբր. Բահաղու

[5]Եբր. է նա, թերեւս խորհ ինչ իցեն նմա, թերեւս զբաղումն ինչ իցէ նորա, և թերեւս իցէ ի ճանապարհի [6]Եբր. ձայն, եւ ոչ գոյր պատասխանի, և ոչ գոյր ունկնդրութիւն [7]Եբր. որդւոցն Յակոբայ [8]Եբր. զքարինսն սեղան [9]Եբր. խրամ [10]Եբր. զխրամն

տարադրին ազաղակեաց Եղիա յերկինս ,
եւ ասէ , Տէր Աստուած Աբրահամու եւ
Իսահակայ եւ Իսրայէլի , այսօր ծանիցեն
եթէ դու ես Տէր Աստուած Իսրայէլի, եւ
ես ծառայ քո . եւ [1]ես արարի" զգործս
37 զայսոսիկ. Լուր ինձ, Տէր, լուր ինձ [2]հրով.
եւ ծանիցէ ժողովուրդս թէ դու ես Տէր
Աստուած , եւ դու դարձուցեր զսիրտ
38 ժողովրդեանս այսորիկ յետս ։ Եւ ան-
կաւ հուր ի Տեառնէ [2]յերկնից , եւ եկեր
զողջակէզսն եւ զփայտսն, եւ [3]զհողն եւ
զջուրն որ [4]ի ծովուն լափեաց հուրն ։
39 Իբրեւ ետես ամենայն ժողովուրդն ,
անկան ի վերայ երեսաց իւրեանց եւ
ասեն , Արդարեւ Տէր , նա է Աստուած,
40 Տէր , նա է Աստուած ։ Եւ ասէ Եղիա
ցժողովուրդն , Կալարուք զմարգարէսն
Բահաղու , եւ մի՛ ոք ապրեսցի ի նո-
ցանէ . եւ կալան զնոսա . եւ իջոյց զնո-
սա Եղիա ի հեղեղատն Կիսոնի եւ կո-
տորեաց զնոսա անդ ։
41 Եւ ասէ Եղիա ցԱքաաբ , Ել, կեր եւ
42 արբ , զի ստնաձայն [5]անձրեւի է ։ Եւ
ել Աքաաբ ուտել եւ ըմպել . եւ Եղիա
ել ի գլուխ լերինն Կարմեղայ , եւ խո-
նարհեցաւ յերկիր , եւ եդ զերեսս իւր
43 ի մէջ ծնգաց իւրոց . Եւ ասէ ցպատան-
եակն իւր , Ել եւ հայեաց ընդ ճանա-
պարհ ծովու . եւ ել եւ հայեցաւ պա-
տանեակն , եւ ասէ , Ոչ ինչ է . եւ ասէ
Եղիա , Այլ դու դարձիր եւթն անգամ ։
44 Եւ դարձաւ պատանեակն եւթն անգամ.
եւ եղեւ յետ եւթներորդումն նուագին ,
եւ ահա ամպ մի փոքրիկ իբրեւ զթաթ
առն [6]հանէր ջուր". եւ ասէ , Ել եւ ա-
սա ցԱքաաբ , Լծեա զկառս քո եւ էջ ,
45 զուցէ հասանիցէ քեզ անձրեւ ։ Եւ ե-
ղեւ մինչ նա այսր եւ անդր դառնայր ,
երկինք մթացան ամպովք եւ հողմով ,
եւ եղեւ անձրեւ մեծ . եւ [7]լայր եւ
46 երթայր Աքաաբ յԵզրայէլ ։ Եւ ձեռն
Տեառն եղեւ ի վերայ Եղիայի . եւ
պնդեաց զմէջ իւր եւ ընթացաւ առաջի
Աքաաբու , մինչեւ մտանել յԵզրայէլ ։

Գլ. ԺԹ

1 Եւ պատմեաց Աքաաբ Յեզաբելայ [2]կնոջ
իւրում" զամենայն զոր արար Եղիա ,
եւ որպէս կոտորեաց զամենայն մար-
2 գարէսն սրով ։ Եւ առաքեաց Յեզաբէլ
հրեշտակ առ Եղիա եւ ասէ , [2]Եթէ
դու Եղիա իցես , եւ ես Յեզաբէլ." ծն
եւ ծն արասցեն ինձ աստուածքն եւ ծն
եւ ծն յաւելցեն , եթէ ոչ վաղիւ ի սոյն
ժամու եղից զանձն քո իբրեւ զանձն
միոյ ի նոցանէ ։
3 Եւ [8]երկեաւ Եղիա՝ եւ յարեաւ գնաց
[9]ստանձինն , եւ եկն ի Բերսաբէէ յեր-
կիրն Յուդայ , եւ եթող անդ զպատա-
4 նեակն իւր ։ Եւ ինքն գնաց յանապատ
աւուր միոյ ճանապարհ , եւ չոգաւ եւ
նստաւ ընդ ռաթեմաւ . եւ խնդրեաց
մահ անձին իւրոյ , եւ ասէ , Շատ է
արդ , Տէր , ա՛ռ զոգի իմ [2]յինէն , Տէր".
5 զի ոչ եմ ես լաւ քան զհարս իմ ։ Եւ
ի քուն եմուտ եւ ննջեաց ընդ ռաթեմաւ.
եւ ահա [10]ոմն մերձեցաւ ի նա եւ ա-
6 սէ , Արի եւ կեր ։ Եւ հայեցաւ Եղիա
եւ ահա ի սնարից նորա նկանակ [11]հա-
ճարոյ եւ կուժ ջրոյ . եւ յարեաւ եկեր
7 եւ արբ , եւ դարձաւ ննջեաց ։ Եւ դար-
ձաւ հրեշտակն Տեառն երկրորդ անգամ
մերձեցաւ առ նա եւ ասէ ցնա , Արի
կեր , զի բազում է ի քէն եւ անդր
8 ճանապարհդ ։ Եւ յարեաւ եկեր եւ արբ,
եւ գնաց զօրութեամբ կերակրոյն այ-
նորիկ զքառասուն տիւ եւ զքառասուն
գիշեր , մինչեւ ցլեառնն Աստուծոյ ի
Քորէբ ։
9 Եւ եմուտ անդ յայրն եւ [12]դադարեաց.
եւ ահա բան Տեառն եղեւ առ նա եւ
10 ասէ , Զի՞ ես դու աստ , Եղիա ։ Եւ ա-
սէ Եղիա , Նախանձեցայ զնախանձ
Տեառն ամենակալի . զի թողին [13]զքեզ
որդիքն Իսրայէլի , զսեղանս քո կոր-
ծանեցին , եւ զմարգարէս քո կոտորե-
ցին սրով . ես միայն մնացեալ եմ , եւ
11 խնդրեն զանձն իմ առնուլ զսա ։ Եւ
ասէ , Ելցես դու [2]վաղիւ եւ կացցես ի
լերինն անդ առաջի Տեառն ։ Եւ ահա Տէր
[14]անցցէ . եւ հողմ մեծ ուժգին որ զլե-
րինս քակիցէ եւ զվէմս խորտակիցէ ա-
ռաջի Տեառն , եւ ոչ ի հողմն Տէր . եւ
յետ հողմոյն շարժումն , եւ ոչ ի շարժ-
12 մանն Տէր . Եւ յետ շարժմանն հուր , եւ
ոչ ի հուրն Տէր . եւ յետ հրոյն ձայն
13 մեղմոյ օդոյ ։ Եւ եղեւ իբրեւ լուաւ Ե-
ղիա , ծածկեաց զերեսս իւր մաշկեկաւն ,

[1]Եբր. բանիւ քով արարի զամենայն [2]Եբր. դ-խ-ւ-է
[3]Եբր. զքարինսն և զհողն [4]Եբր. ի խրամին
[5]Եբր. բազմութեան անձրեւի [6]Եբր. ելանէր ի
ծովէ [7]Եբր. հեծաւ

[8]Կամ, ետես [9]Եբր. ջանձնապուր [10]Եբր.
հրեշտակ [11]Եբր. ի թոնրոյ [12]Եբր. անդ-
ագաւ [13]Եբր. զուխտ քո [14]Եբր. անցանէ

եւ եկ եւ եկաց [1]ի ներքոյ այրին. եւ
ահա բարբառ առ նա եւ ասէ, Զի՞ ես
14 դու աստ, Եղիա։ Եւ ասէ Եղիա, Նա-
խանձեցայ զնախանձ Տեառն ամենակա-
լի, զի թողին զուխտ քո որդիքն Իս-
րայելի, զսեղանս քո քակեցին, եւ
զմարգարէս քո կոտորեցին սրով. եւ
միայն մնացեալ եմ, եւ խնդրեն զանձն
15 իմ առնուլ զնա։ Եւ ասէ ցնա Տէր, Գնա
եւ դարձիր զճանապարհ քո, եւ եր-
թիցես զճանապարհ անապատին Դա-
մասկոսի, եւ երթիցես եւ օծցես զԱ-
16 զայէլ ի թագաւոր Ասորւոց. Եւ զՅէու
որդի Նամեսեայ ի թագաւոր ի վերայ
Իսրայելի. եւ զԵղիսէ որդի Սափա-
տայ յԱբելմաուլայ՝ օծցես ի մարգարէ
17 փոխանակ քո։ Եւ եղիցի զապրեալն ի
սրոյ Ազայելի սպանցէ Յէու, եւ զապ-
րեալն ի սրոյ Յէուայ սպանցէ Եղիսէ.
18 Եւ [2]թողցես դու" յԻսրայէլէ եւթն հա-
զար արանց զամենայն որոյ ոչ իցէ
կրկնեալ ծունր Բահաղու, եւ զամենայն
բերան որոյ ոչ իցէ պագեալ զնա։
19 Եւ գնաց անտի, եւ եգիտ զԵղիսէ
որդի Սափատայ, եւ նա [3]վարէր երկո-
տասան եզամբք. եւ զոյգք զոյգք ե-
զանց առաջի նորա, եւ ինքն ի վերայ
երկոտասանիցն". եւ եհաս Եղիա առ
նա, եւ ընկէց զմաշկեակն իւր ի վե-
20 րայ նորա. Եւ եթող Եղիսէ զեզինսն,
եւ ընթացաւ զհետ Եղիայի, եւ ասէ,
Համբուրեցից զհայր իմ եւ զմայր իմ,
եւ եկից զկնի քո. եւ ասէ ցնա, Երթ
դարձիր անդրէն, զի՞նչ արարի քեզ։
21 Եւ դարձաւ ի նմանէ, եւ առ [4]զլծոյզս
զոյգս" եզանցն եւ եզեն, եւ զործեօք
եզանցն հասոյց զմիսս, եւ ետ ժո-
ղովրդեանն եւ կերան, եւ յարեաւ գնաց
զհետ Եղիայի եւ պաշտէր զնա։

ԳԼ. Ի

1 Եւ [5]որդի Ադերայ" արքայ Ասորւոց ժո-
ղովեաց զամենայն զօրս իւր, եւ [6]ել եւ
նստաւ զՍամարիաւ, եւ" երեսուն եւ
երկու թագաւորք ընդ նմա, եւ [6]ամե-
նայն երիվարք եւ կառք. [7]ելին եւ նստան
զՍամարիաւ, եւ տային" պատերազմ
2 ընդ նմա։ Եւ առաքեաց հրեշտակս առ Ա-
3 քաաբ արքայ Իսրայելի ի քաղաքն, Եւ
ասէ ցնա, Այսպէս ասէ [5]որդի Ադերայ".
Արծաթ քո եւ ոսկի քո իմ է, եւ կա-
նայք քո եւ որդիք քո գեղեցիկք իմ
4 են։ Պատասխանի ետ արքայն Իսրայե-
լի եւ ասէ, Որպէս խօսեցար, տէր իմ
արքայ, քո եմ ես եւ ամենայն ինչ իմ։
5 Եւ դարձան հրեշտակքն եւ ասեն,
Այսպէս ասէ [5]որդի Ադերայ". Ես յղեցի
զի զարծաթ քո եւ զոսկի քո եւ զկա-
նայս քո եւ զորդիս քո ցիս տացես.
6 Զի վաղիւ ի սոյն ժամու առաքեցից
զծառայս իմ, եւ յուզեսցեն զտուն քո
եւ զտուն ծառայից քոց, եւ եղիցին
ցանկալիք աչաց [8]նոցա, յոր արկանի-
7 ցեն զձեռս իւրեանց՝ առցեն։ Եւ կոչեաց
արքայն Իսրայելի զամենայն ծերակոյտ
երկրին եւ ասէ, Գիտասջիք եւ տեսջիք
զի չարիս ինձ խնդրէ նա, զի առաքեաց առ
իս [9]զուստերաց իմոց եւ զդստերաց իմոց,"
զարծաթ իմ եւ զոսկի իմ ոչ արգելի ի
8 նմանէ։ Եւ ասեն ցնա ծերքն եւ ամենայն
ժողովուրդն, Մի՛ լսեր եւ մի՛ յանձն
9 առնուր։ Եւ ասէ ցհրեշտակս [10]որդւոյն
Ադերայ", Ասացէք ցտէրն [11]ձեր ցար-
քայ. Զամենայն ինչ զոր առաքեցեր առ
ծառայ քո յառաջնումն նուագին՝ արա-
րից, բայց զայդ բան ոչ կարեմ առնել.
եւ գնացին արքն եւ դարձուցին նմա
պատասխանի։
10 Եւ առաքեաց առ նա [5]որդին Ադերայ"
եւ ասէ, Օն եւ օն արասցեն ինձ դիքն
եւ օն եւ օն յաւելցեն, եթէ բաւեսցէ հող
Սամարեայ՝ [12]աղխաւք հետևորձ" ամե-
11 նայն զօրականի հետեւակաց իմոց։ Եւ
պատասխանի ետ արքայն Իսրայելի եւ
ասէ, [13]Շատ է արդ, մի՛ պարծեսցի կորն
12 իբրեւ ուղիղն"։ Եւ եղեւ իբրեւ [14]պա-
տասխանի ետ նմա" զբանս զայս, եւ
ինքն ի ըմպել էր եւ ամենայն թագա-
ւորք որ ընդ նմա ի խորանս. եւ ասէ
ցծառայսն իւր, [15]Շինեցէք պատնէշ. եւ
եդին պատնէշ" շուրջ զքաղաքաւն։
13 Եւ ահա մարգարէ մի մատեաւ առ
Աքաաբ արքայ Իսրայելի եւ ասէ, Այս-
պէս ասէ Տէր. Եթէ տեսանիցե՞ս զայն

[1]Եբր. ի բերան [2]Եբր. թողի. (տես Հռովմ. ԺԱ.4.)
[3]Եբր. վարէր երկոտասան զոյգս առաջի իւր, եւ
ինքն յերկոտասաներորդին [4]Եբր. զլուծ [5]Եբր.
Բենադադ [6]Եբր. սուս [7]Եբր. եւ ել և
պաշարեաց զՍամարիա եւ տայր

[8]Եբր. քոց [9]Եբր. զկանանց իմոց եւ զորդւոց
իմոց, և [10]Եբր. Բենադադայ [11]Եբր. իմ [12]Եբր.
ափոց [13]Եբր. Ասացէք, Մի պարծեսցի որ ածէն
սուր՝ իբրեւ զայն որ ի բաց դնէ [14]Եբր. լուաւ
[15]Եբր. Ձակատեցարուք, եւ ճակատեցան

ամբոխ մեծ. ահա ես մատնեցից զնոսա
այսօր ի ձեռս քո, եւ գիտասցես թէ ես
14 եմ Տէր։ Եւ ասէ Աքաաբ, Ի՞ւ. եւ ա-
սէ, Այսպէս ասէ Տէր, Մանկունք իշ-
խանաց գաւառաց։ Եւ ասէ Աքաաբ,
Ո՞ նախ գրգռեսցէ զպատերազմն. եւ
15 ասէ, Դու։ Եւ հանդէս արար [1]ծառայից
իշխանաց գաւառաց, եւ եղեն երկե-
րիւր եւ [2]երեսուն. եւ ապա հանդէս
արար ամենայն ժողովրդեանն, ամե-
նայն որդւոց [3]զօրութեան՝ եւթն հա-
16 զար արանց, եւ [4]ելանէր ցմիջօրէիւ։ Եւ
[5]որդին Ադերայ" ըմպէր գինի մանալ էր եւ
արբեալ [6]ի Սոկքաւ, ինքն եւ երեսուն
եւ երկու թագաւորքն օգնականք նո-
17 րա։ Եւ ելին նախ մանկունք իշխանաց
գաւառացն, եւ [7]առաքեցին առ որդին
Ադերայ", եւ պատմեցին նմա եւ ասեն,
18 Արք ելին ի Սամարիայ։ Եւ ասէ ցնո-
սա, Եթէ ի խաղաղութիւն ելանիցեն,
կալջիք զնոսա կենդանիս, եւ եթէ ի
պատերազմ ելանիցեն, կալջիք զնոսա
19 կենդանիս։ Եւ ելին ի քաղաքէն մանկունք
իշխանաց գաւառացն, եւ զօրն զկնի
20 նոցա. Եւ եհար իւրաքանչիւր ոք որում
զդիպեցաւ. եւ փախեան Ասորիքն, եւ
հալածեաց զնոսա Իսրայէլ. եւ ապրե-
ցաւ [5]որդին Ադերայ" արքայ Ասորւոց
հեծեալ ձիոյ՝ հանդերձ [8]երիւք ամամբք"
21 հեծելովք։ Եւ ել արքայն Իսրայէլի եւ
[9]առ զերիվարս եւ զկառս, եւ եհար
յԱսորւոց հարուածս մեծամեծս։
22 Եւ մատեաւ մարգարէն առ արքայ
Իսրայէլի, եւ ասէ ցնա, Զօրացիր եւ
գիտա, եւ տես զինչ գործեսցես. զի ի
դարձի տարւոյս այսորիկ [8]որդի Ադերայ"
արքայ Ասորւոց ելանելոց է ի վերայ քո։
23 Եւ ծառայք արքային Ասորւոց ասեն
ցնա, Աստուած լերանց է Աստուածն
Իսրայէլի, [8]եւ ոչ աստուած դաշտաց."
վասն այնորիկ յաղթահարեցին զմեզ.
եթէ տայցեմք ընդ նոսա պատերազմ ի
24 դաշտի, յաղթեմք նոցա։ Եւ զայս բան
արասցես. ի բաց արա զթագաւորսն
յիւրաքանչիւր տեղւոջէ, եւ դիր ընդ
25 նոցա նախարարս. Եւ [10]փոխանակես-
ցուք քեզ զօրս ընդ զօրացն որ անկան
ի քէն, եւ երիվարս ընդ երիվարացն,
եւ կառս ընդ կառացն. եւ տացուք ընդ
նոսա պատերազմ ի դաշտի եւ յաղթես-
ցուք նոցա. եւ արար բարբառոյ նո-
26 ցա, եւ արար այնպէս։ Եւ եղեւ ի դառ-
նալ տարւոյն հանդէս արար [5]որդին Ա-
դերայ" Ասորւոց. եւ ել յԱփեկա ի պա-
27 տերազմ ընդ Իսրայէլի։ Եւ որդիքն Իս-
րայէլի արարին հանդէս, եւ [11]երկգնդե-
ցան եւ հասին յառաջս նոցա. եւ ճա-
կատեցան որդիքն Իսրայէլի ընդդէմ Ա-
սորւոցն իբրեւ երկու երամակք այծից.
եւ Ասորիքն լցին զերկիրն։
28 Եւ մատեաւ այրն Աստուծոյ եւ ասէ
ցարքայն Իսրայէլի, Այսպէս ասէ Տէր,
Փոխանակ զի ասացին Ասորիքն թէ Աս-
տուած լերանց է Տէր [8]Աստուած Իս-
րայէլի" եւ ոչ Աստուած դաշտաց, [12]նա
տացէ զզօրն" զայն զմեծ ի ձեռս քո, եւ
29 [13]գիտասցես թէ ես եմ Տէր։ Եւ բանա-
կեցան նոքա ընդդէմ սոցա զեւթն օր.
եւ եղեւ յաւուրն եւթներորդի ընդխառ-
նեցաւ պատերազմն. եւ եհար Իսրայէլ
յԱսորւոցն հարեւր հազար հետեւակաց
30 ի միում աւուր. Եւ մնացեալքն փա-
խեան յԱփեկա ի քաղաքն [8]իւրեանց, եւ
անկաւ պարիսպն ի վերայ քսան եւ
եւթն հազար արանց մնացելոց. եւ [5]որ-
դին Ադերայ" փախեաւ եւ եմուտ [14]ի
տուն իւր" սենեակ ի սենեկէ։
31 Եւ ասեն ցնա ծառայք իւր, Ահաւա-
սիկ [15]գիտեմք զի թագաւորք տանն Իս-
րայէլի թագաւորք ողորմութեան են.
արկցուք քուրձս զմիջովք մերովք եւ
չուանս ի գլուխս մեր, եւ ելցուք առ
արքայն Իսրայէլի. թերեւս ապրեցուս-
32 ցէ [16]զանձինս մեր"։ Եւ զգեցան քուրձս
ի մէջս իւրեանց, եւ եդին չուանս ի
գլուխս իւրեանց. եւ [17]ասեն ցարքայն
Իսրայէլի", Ծառայ քո [5]որդի Ադերայ"
ասէ, Կեցցէ անձն իմ։ Եւ ասէ, Եթէ
տակաւին կենդանի՞ իցէ, եղբայր իմ է։
33 Եւ արքն հմայեցին եւ [18]նուիրեցին եւ
քաղեցին զբանն ի բերանոյ նորա. եւ
ասեն, Եղբայր քո [5]որդի Ադերայ" սա
է. եւ ասէ, Մտէք եւ ածէք զնա. եւ
ել առ նա [5]որդին Ադերայ", եւ հանին
34 զնա առ նա ի կառսն։ Եւ ասէ ցնա,
Զքաղաքսն զոր առ հայր իմ ի հօրէ

[1] Եբր. մանկանցն [2] Եբր. երեսուն եւ երկու [3] Եբր. Իսրայէլի [4] Եբր. ելին [5] Եբր. Բենադադ [6] Եբր. ի խորանս [7] Եբր. առաքեաց Բենադադ [8] Յն. Եբր. պակաս [9] Եբր. եհար [10] Եբր. դու գումարեսցես

[11] Եբր. կազմեցան [12] Եբր. եւ տաց զամենայն զօրն [13] Եբր. գիտասջիք [14] Եբր. ի քաղաքն [15] Եբր. լուեալ է մեր [16] Եբր. զանձն քո [17] Եբր. եկին առ արքայն Իսրայէլի եւ ասեն [18] Եբր. փութացեալ

քումմէ՝ դարձուցից առ քեզ, եւ [1]հան-
ցես քեզ հրապարակս" ի Դամասկոս, որպէս
եդ հայր իմ ի Սամարիա. եւ ասէ, Եւ
ես արձակեցից զքեզ ուխտիւ. եւ եդ
ընդ նմա ուխտ, եւ արձակեաց զնա։
35 Եւ այր մի յորդւոց մարգարէիցն ա-
սէ ցընկեր իւր բանիւ Տեառն, Հար զիս.
եւ ոչ կամեցաւ այրն հարկանել զնա։
36 Եւ ասէ ցնա, Փոխանակ զի ոչ լուար
ձայնի Տեառն, ահա իբրեւ գնասցես յի-
նէն՝ սպանցէ զքեզ առիւծ. եւ իբրեւ
գնաց ի նմանէ, եգիտ զնա առիւծ եւ սպան
37 զնա։ Եւ եգիտ այլ այր եւ ասէ, Հար
զիս. եւ եհար զնա այրն, եհար եւ
38 ջախջախեաց։ Եւ չոգաւ մարգարէն եւ
եկաց առաջի արքային ի վերայ ճանա-
պարհին, եւ կապեաց պատանաւ զաչս
39 իւր։ Եւ եղեւ իբրեւ անցանէր ընդ այն
արքայ, եւ նա աղաղակեաց առ ար-
քայ եւ ասէ, Ծառայ քո ել ընդ զօրու
ի պատերազմի, եւ ահա այր մի ած առ
իս այր եւ ասէ, Պահեա զայրդ զայդ,
ապա թէ զերծանելով զերծցի, եղիցի
անձն քո ընդ անձին դորա, կամ տա-
40 ղանդ մի արծաթոյ կշռեսցես։ Եւ եղեւ
մինչ ծառայ քո այսր եւ անդր հայէր,
եւ նա չէր ուրեք. եւ ասէ արքայն Իս-
րայէլի ցնա, [2]Ահա եւ այդ յինէն կոր-
41 մանէ զաւ է. սպանե՞ր ուրեմն"։ Եւ փու-
թացաւ ի բաց առ զպատանն յաչաց իւ-
րոց. եւ ծանեաւ զնա արքայն Իսրա-
42 յէլի թէ ի մարգարէից անտի է նա։ Եւ
ասէ ցնա, Այսպէս ասէ Տէր. Փոխա-
նակ զի հաներ դու զայրն մեռանելոյ ի
ձեռաց [3]իմոց, եղիցի անձն քո փոխա-
նակ անձին նորա, եւ ժողովուրդ քո
43 փոխանակ ժողովրդեան նորա։ Եւ գնաց
արքայն Իսրայէլի ի տուն իւր տխրեալ
եւ լքեալ, եւ եկն ի Սամարիա։

## ԳԼ. ԻԱ

1 Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ, այգի
մի էր Նաբովթայ Յեզրայելացւոյ [4]մերձ
առ կալ" Աքաաբու արքայի Սամարեայ։
2 Եւ խօսեցաւ արքայ ընդ Նաբովթայ եւ
ասէ, Տուր ինձ զայգին քո, եւ եղիցի
ինձ ի պարտէզ բանջարոյ, զի մերձ է
ի տուն իմ. եւ տաց քեզ այլ այգի լաւ
քան զնա. եւ եթէ հաճոյ իցէ առաջի
քո, տաց քեզ արծաթ գինս այգւոյն
քո. [3]եւ եղիցի ինձ ի պարտէզ բանջա-
3 րոյ։" Եւ ասէ Նաբովթ ցարքայ, Քաւ
լիցի ինձ [5]յԱստուծոյ իմմէ" տալ քեզ
զժառանգութիւն հարց իմոց։
4 Եւ եկն Աքաաբ ի տուն իւր տխրեալ
եւ լքեալ վասն բանին զոր խօսեցաւ
ընդ նմա Նաբովթ Յեզրայելացի եւ ա-
սէ, Ոչ տաց քեզ զժառանգութիւն հարց
իմոց. եւ ննջեաց ի մահիճս իւր, եւ
ծածկեաց զերեսս իւր, եւ ոչ եկեր հաց։
5 Եւ եմուտ առ նա Յեզաբէլ կին իւր եւ
խօսեցաւ ընդ նմա եւ ասէ, Զի՞ խռո-
6 վեալ է ոգի քո եւ ոչ ուտես հաց։ Եւ
ասէ ցնա, Զի խօսեցայ ընդ Նաբովթայ
Յեզրայելացւոյ եւ ասեմ, Տուր ինձ
զայգին քո ընդ արծաթոյ, եւ եթէ կա-
միս՝ տաց քեզ այլ այգի փոխանակ նո-
րա. եւ ասէ, Ոչ տաց քեզ [6]զժառան-
7 գութիւն հարց իմոց"։ Եւ ասէ ցնա Յե-
զաբէլ կին իւր, Արդ դո՞ւ այդպէս առնիցես
զթագաւորութիւնդ ի վերայ Իսրայէլի.
արի՛ կեր հաց եւ սթափեաց. եւ ես տաց
քեզ զայգին Նաբովթայ Յեզրայելացւոյ։
8 Եւ գրեաց հրովարտակ յանուն Աքաա-
բու, եւ կնքեաց մատանեաւ նորա. եւ
առաքեաց զհրովարտակն առ ծերս եւ
առ ազատս քաղաքին նորա, որ բնա-
9 կեալ էին ընդ Նաբովթայ։ Եւ գրեալ էր ի
հրովարտակին այսպէս. [7]Պահեցէք պահս,
եւ նստուցէք զՆաբովթ ի գլուխ ժո-
10 ղովրդեանն. Եւ նստուցէք երկուս արս
որդիս անօրինաց հանդէպ նորա, եւ վկա-
յեսցեն զնմանէ եւ ասասցեն, թէ [8]Օրհ-
նեցեր զԱստուած եւ զարքայ. եւ հան-
ցեն զնա եւ քարկոծեսցեն, եւ մեռցի։
11 Եւ արարին արք քաղաքին նորա՝
ծերք եւ ազատք որ նստէին ի քաղա-
քին նորա՝ որպէս առաքեաց առ նոսա
Յեզաբէլ, զոր օրինակ գրեալ էր ի հրո-
12 վարտակին։ Կարդացին պահս, եւ նստու-
ցին զՆաբովթ ի գլուխ ժողովրդեանն։
13 Եւ եկին երկու արք՝ որդիք անօրինաց,
եւ նստան հանդէպ նորա. եւ վկայեցին
արքն ապստամբութեան զՆաբովթայ
առաջի ամենայն ժողովրդեանն եւ ա-
սեն, թէ Օրհնեաց Նաբովթ զԱստուած
եւ զարքայ. եւ հանին զնա արտաքոյ
քաղաքին, եւ քարկոծեցին զնա քա-

[1] Եբր. դիցես քեզ պողոտայս [2] Եբր. Այսպէս է դատաստան քո, դու վճռեցեր [3] Եբր. [illegible]
[4] Եբր. յԵզրայէլ մերձ յարքունիս

[5] Եբր. ի Տեառնէ [6] Եբր. զայգի իմ [7] Եբր. Քարոզեցէք [8] Ըստ Եբրայեցւոյն նշանակէ Հայհոյեցեր

14 րամբք, եւ մեռաւ։ Եւ առաքեցին առ
Յեզաբէլ եւ ասեն, Քարկոծեցաւ Նա-
բովթ եւ մեռաւ։
15 Եւ եղեւ իբրեւ լուաւ Յեզաբէլ թէ
քարկոծեցաւ Նաբովթ եւ մեռաւ, ասէ
Յեզաբէլ ցԱքաաբ, Արի՛ ժառանգեա
զայգին Նաբովթայ Յեզրայելացւոյ՝ զոր
ոչ ետ քեզ ընդ արծաթոյ. զի ոչ է Նա-
16 բովթ կենդանի, քանզի մեռաւ։ Եւ ե-
ղեւ իբրեւ լուաւ Աքաաբ թէ մեռաւ
Նաբովթ [1]Յեզրայելացի, պատառեաց
զհանդերձս իւր եւ քուրձ զգեցաւ։ Եւ
եղեւ յետ այնորիկ եւ՝՝ յարեաւ Աքաաբ
եւ էջ յայգին Նաբովթայ Յեզրայելաց-
ւոյ ժառանգել,
17 Եւ խօսեցաւ Տէր ընդ Եղիայի Թեզ-
18 բացւոյ եւ ասէ, Արի էջ ընդ առաջ Ա-
քաաբու արքային Իսրայելի որ ի Սամա-
րիա. զի նա էջ յայգին Նաբովթայ ժա-
19 ռանգել զնա. Եւ խօսեսցիս ընդ նմա
եւ ասասցես, Այսպէս ասէ Տէր. [2]Որպէս
սպաներ եւ ժառանգեցեր. վասն այսո-
րիկ՝՝ այսպէս ասէ Տէր. Ի տեղւոջ ուր
լակեցին շունք [1]եւ խոզք՝՝ զարիւն Նա-
բովթայ, անդ լակեսցեն զարիւն քո
20 [3]եւ բոզք լուասցին յարեան քում՝՝։ Եւ
ասէ Աքաաբ ցԵղիա, Եթէ գտե՞ր զիս,
թշնամի իմ։ Եւ ասէ, Գտի. զի [4]ի զուր
հպարտացար՝՝ գործել չար առաջի Տեառն
21 [1]առ ի բարկացուցանելոյ զնա՝՝։ Ահա ես
ածից ի վերայ քո չարիս. եւ [5]բարբա-
քեցից զկնի քո՝՝, եւ սատակեցից զԱ-
քաաբու որ միզիցէ զորմով, եւ զնե-
22 ղեալն եւ զլքեալն յԻսրայէլէ. Եւ տաց
զտուն քո իբրեւ զտունն Յերոբովամու
որդւոյ Նաբատայ, եւ իբրեւ զտունն Բաա-
սայ որդւոյ Աքիայ, վասն բարկութեանցն
որովք բարկացուցեր զիս եւ յանցուցեր
23 զԻսրայէլ։ Եւ առ Յեզաբէլ խօսեցաւ
Տէր եւ ասէ, Շունք կերիցեն զնա առ
24 պարսպաւն Յեզրայելի։ Զմեռեալ Աքաա-
բու ի քաղաքի կերիցեն շունք, եւ զմե-
ռեալ նորա ի դաշտի կերիցեն թռչունք
երկնից։
25 Սակայն [6]ի զուր մեծամեծաց Աքաաբ՝՝
առնել չար առաջի Տեառն, որպէս յիմա-
26 րեցոյց զնա Յեզաբէլ կին իւր։ Եւ գար-
շացաւ յոյժ երթալ զհետ գարշելեացն
ըստ ամենայնի զոր արար Ամովրհացին,
զոր սատակեաց Տէր յերեսաց որդւոյն
Իսրայելի։
27 Եւ [7]վասն բանին զի ստրջացաւ ար-
քայ յերեսաց Տեառն եւ երթայր լալով,
եւ՝՝ պատառեաց զպատմուճան իւր եւ
զգեցաւ քուրձ ի վերայ մարմնոյ իւրոյ,
եւ պահեաց եւ զգեցաւ քուրձ [1]յաւուրն
յորում սպան զՆաբովթ Յեզրայելացի՝՝,
28 եւ գնայր կորակոր։ Եւ եղեւ բան Տեառն
[8]ի ձեռն ծառայի իւրոյ Եղիայի վասն
29 Աքաաբու, եւ ասէ Տէր՝՝, Տեսե՞ր զի
ստրջացաւ Աքաաբ յերեսաց իմոց. փո-
խանակ զի ակնկորեաց յերեսաց իմոց,
ոչ ածից չարիս յաւուրս նորա, այլ յա-
ւուրս որդւոյ նորա ածից չարիս ի վե-
րայ տան նորա։

## Գլ. ԻԲ

1 Եւ նստաւ զերեամ, եւ ոչ էր պատե-
րազմ ի մէջ Ասորւոց եւ ի մէջ Իսրա-
2 յելի։ Եւ եղեւ յամին երրորդի էջ Յով-
սափատ արքայ Յուդայ առ արքայ Իս-
3 րայելի։ Եւ ասէ արքայն Իսրայելի ցծա-
ռայս իւր, Ո՞չ գիտէք եթէ մեր է Ռա-
մովթ Գաղաադ, եւ մեք լռեալ կամք
առնուլ զնա ի ձեռաց արքային Ասոր-
4 ւոց։ Եւ ասէ [1]արքայ Իսրայելի՝՝ ցՅով-
սափատ, Եկեսցե՞ս ընդ մեզ յՌամովթ Գա-
ղաադ ի պատերազմ. եւ ասէ Յով-
սափատ ցարքայն Իսրայելի, Որպէս ես՝
նոյնպէս եւ դու, եւ որպէս զօրք իմ՝ զօրք
քո, եւ որպէս երիվարք իմ՝ երիվարք քո։
5 Եւ ասէ Յովսափատ [1]արքայ Յուդայ՝՝
ցարքայն Իսրայելի, Աղէ, հարցէք այսօր
6 զՏէր։ Եւ ժողովեաց արքայն Իսրայելի
[9]զամենայն մարգարէս՝՝ իբրեւ արս չորեք-
հարիւր. եւ ասէ ցնոսա արքայ, Եր-
թա՞յց յՌամովթ Գաղաադ ի պատերազմ,
թէ զանգի կացայց. եւ ասեն, Ել, եւ
7 տալով տացէ Տէր ի ձեռս արքայի։ Եւ
ասէ [10]Յովսափատ ցարքայն Իսրայելի,
Իցէ՞ ոք արդեւք աստ մարգարէ Տեառն՝
թէ չիցէ՝՝, եւ հարցցուք զՏէր նովաւ։
8 Եւ ասէ արքայն Իսրայելի ցՅովսափատ,
Է՛ աստ այր մի հարցանել նովաւ զՏէր,
եւ ես ատեցի զնա, զի ոչ խօսի զինէն

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. Սպաներ, եւ ժառանգե՞ս եւս. եւ խօսեսցիս առ նա եւ ասասցես. [3] Եբր. զքո իսկ [4] Եբր. վաճառեցեր զանձն [5] Եբր. ջնջեցից զսերունդ քո [6] Եբր. չեղեւ իբրեւ զԱքաաբ որ վաճառեաց զանձն

[7] Եբր. եղեւ իբրեւ լուաւ Աքաաբ զբանս զայսոսիկ, [8] Եբր. առ Եղիա Թեզբացի, եւ ասէ [9] Եբր. զմարգարէս [10] Եբր. Յովսափատ, Միթէ չիցէ՞ աստ այլ մարգարէ Տեառն

բարի, այլ չար. Միքիա որդի Յեմլեայ։
Եւ ասէ Յովսափատ ¹արքայ Յուդայ",
Մի՛ ասասցէ այդպէս արքայ։
9 Եւ կոչեաց արքայն Իսրայէլի ներքի-
նի մի եւ ասէ, Վաղվաղակի ած այսր
10 զՄիքիա որդի Յեմլեայ։ Եւ արքայն Իս-
րայէլի եւ Յովսափատ արքայ Յուդայ
նստէին այր իւրաքանչիւր յաթոռ իւ-
րում վառեալ ի դրունս Սամարիայ, եւ
ամենայն մարգարէքն մարգարէանային
11 առաջի նոցա։ Եւ արար իւր Սեդեկիա
որդի Քանանու եղջիւրս երկաթիս եւ
ասէ, Այսպէս ասէ Տէր, Սոքօք խեթ-
կեսցես զԱսորիս մինչեւ սպառեսցին։
12 Եւ ամենայն մարգարէքն մարգարէա-
նային նոյնպէս, եւ ասէին, Ել յՌամովթ
Գաղաադ, եւ յաջողեսցիս, եւ տացէ Տէր
ի ձեռս ²քո զարքայն Ասորւոց"։
13 Եւ հրեշտակն որ չոգաւ կոչել զՄի-
քիա, պատմեաց նմա եւ ասէ, Ահա-
ւասիկ ամենայն մարգարէքն խօսին իբ-
րեւ ընդ մի բերան բարի զարքայէ. արդ
եղիցի բան քո իբրեւ զմիոյ ի նոցանէն,
14 եւ խօսեաց բարի։ Եւ ասէ Միքիա,
Կենդանի է Տէր, եթէ ոչ զոր ինչ ա-
սասցէ ցիս Տէր, զայն խօսեցայց։
15 Եւ եկն առ արքայ, եւ ասէ ցնա արքայ,
Միքիա, ելի՞ց յՌամովթ Գաղաադ ի պա-
տերազմ, եթէ դադեալ կացից։ Եւ ա-
սէ, Ել եւ յաջողեսցիս, եւ տացէ Տէր
16 ի ձեռս արքայի։ Եւ ասէ ցնա արքայ,
³Դարձեալ կրկին երդմնեցուցեալ" զքեզ,
զի խօսեսցիս ընդ իս ճշմարտութեամբ
17 յանուն Տեառն։ Եւ ասէ, ¹Ոչ այդպէս
է։" Տեսի զամենայն Իսրայէլ ցրուեալ
ընդ լերինս իբրեւ զհօտ որոյ ոչ գուցէ
հովիւ. եւ ասէ Տէր, Ոչ գոն դոցա
տեարք, դարձցին իւրաքանչիւր ոք ի
18 տուն իւր խաղաղութեամբ։ Եւ ասէ
արքայն Իսրայէլի ցՅովսափատ ¹արքայ
Յուդայ", Ո՞չ ասացի քեզ թէ Ոչ մար-
գարէանայ նա ինձ բարի, բայց եթէ
19 չար։ Եւ ասէ Միքիա, ⁴Ոչ այդպէս.
ոչ ես ինչ, այլ" լուր զպատգամ Տեառն.
⁵ո՞չ ապաքէն տեսի զՏէր Աստուած Իս-
րայէլի" նստեալ ի վերայ աթոռոյ իւրոյ,
եւ ամենայն զօրք երկնից կային շուրջ
20 զնովաւ յաջմէ եւ յահեկէ. Եւ ասէ Տէր,
Ո՞ պատրեսցէ զԱքաաբ ¹արքայ Իսրա-
յէլի", եւ ելցէ անկցի յՌամովթ Գաղաադ.

եւ ասէ ոմն այսպէս, եւ ոմն այնպէս։
21 Եւ ել ոգի եւ եկաց առաջի Տեառն եւ
22 ասէ, Ես պատրեցից զնա։ Եւ ասէ ցնա
Տէր, Ի՞ւ։ Եւ ասէ, Ելից եւ եղէց ոգի
սուտ ի բերան ամենայն մարգարէից նո-
րա։ Եւ ասէ, Պատրեսցես եւ կարաս-
23 ցես. ել եւ արա այդպէս։ Եւ արդ ա-
հա ետ Տէր ոգի սուտ ի բերան ամենայն
մարգարէիցդ քոց այդոցիկ, եւ Տէր խօ-
սեցաւ ի վերայ քո չարիս։
24 Եւ մատեաւ Սեդեկիա որդի Քանա-
նու, եւ եհար Միքիայի զծնօտս նորա,
եւ ասէ, Ո՞ր հոգի Տեառն է այն, որ
25 անց յինէն եւ խօսեցաւ ի քեզ։ Եւ
ասէ Միքիա, Ահա դու իսկ տեսցես յա-
ւուր յայնմիկ յորում մտանիցես սենեակ
ի սենեկէ թաքչել։
26 Եւ ասէ արքայն Իսրայէլի, Կալայք
զՄիքիա եւ տուք ցԱմոն քաղաքապետ
27 եւ ցՅովաս որդի արքայի, Եւ ասասջիք,
Այսպէս ասէ արքայ. Դիք զդա ի բան-
տի, եւ կերիցէ հաց նեղութեան եւ ջուր
նեղութեան, մինչեւ դարձայց խաղաղու-
28 թեամբ։ Եւ ասէ Միքիա. Եթէ դու
դառնալով դարձցիս խաղաղութեամբ,
ապա ոչ խօսեցաւ յիս Տէր. եւ ասէ,
Լուարուք, ⁶զօրքդ ամենեքեան։
29 Եւ ել արքայն Իսրայէլի եւ Յովսափատ
արքայն Յուդայ ընդ նմա յՌամովթ Գա-
30 ղաադ։ Եւ ասէ արքայն Իսրայէլի ցՅով-
սափատ ¹արքայն Յուդայ", Այլակերպե-
ցայց եւ մտից ի պատերազմ, եւ դու
զգեցիր ⁷զիմ հանդերձ". եւ այլակերպե-
ցաւ արքայն Իսրայէլի, եւ եմուտ ի
31 ճակատն։ Եւ արքայն Ասորւոց պատուէր
ետ կառավարաց իւրոց⁸ եւ ասէ, Մի՛
մարտնչիցիք ընդ մեծի կամ ընդ փոքու,
32 այլ միայն ընդ արքային Իսրայէլի։ Եւ
եղեւ իբրեւ տեսին կառավարքն զՅով-
սափատ ¹արքայն Յուդայ", եւ ասեն ընդ մի-
մեանս, Թուի թէ սա իցէ արքայն Իս-
րայէլի. եւ պատեցին զնա պատերազ-
33 մեւ. եւ աղաղակեաց Յովսափատ։ Եւ
եղեւ իբրեւ տեսին կառավարքն եթէ
չէ նա արքայն Իսրայէլի, դարձան ի
34 նմանէ։ Եւ ձգեաց մի ոմն ⁹կորովութեամբ
զաղեղն իւր, եւ եհար զարքայն Իսրա-
յէլի ընդ գրահն եւ ընդ թոքառաջն.
եւ ասէ ցկառավարն իւր, Դարձո զձեռն
քո եւ հան զիս ի պատերազմէս զի խո-

¹ Եբր. [illegible] ² Եբր. արքայի ³ Եբր. Բանի՞ցս երդմնեցուցից ⁴ Եբր. Վասն որոյ ⁵ Եբր. տեսի զՏէր

⁶ Եբր. ժողովուրդք ⁷ Եբր. զհանդերձ քո ⁸ Եբրայեցին յաւելու, երեսուն եւ երկուց ⁹ Եբր. յանդէտս

35 ցեալ եմ։ Եւ սաստկացաւ պատերազմն
յաւուր յայնմիկ. եւ արքայ կայր ի վե-
րայ կառացն ընդդէմ Ասորւոցն [1]յայգուէ
մինչեւ ցերեկոյ". եւ հոսէր արիւնն ի
վիրէ անտի [2]եւ ընդր զծոց կառացն. եւ
36 իբրեւ ընդ երեկս եղեւ, եւ մեռաւ"։ Եւ
եկաց քարոզ զօրուն ի բանակին ընդ
մտանել արեւուն եւ ասէ, Իւրաքան-
չիւր ոք ի քաղաք իւր եւ յերկիր [3]իւր,
37 զի մեռաւ արքայ։ Եւ եկն" ի Սամարիա,
38 եւ թաղեցին զարքայ ի Սամարիա։ Եւ
լուացին զկառսն յաւազանն Սամարեայ.
եւ լիզէին [4]խոզք եւ" շունք զարիւն
նորա, եւ [5]բոզք լուացան յարեանն", ըստ
բանին Տեառն զոր խօսեցաւ։
39 Եւ մնացորդք բանիցն Աքաաբու, եւ
ամենայն ինչ զոր արար, եւ տունն
փղոսկրեայ զոր շինեաց, եւ ամենայն
քաղաքքն զորս արար, ահաւասիկ գրեալ
է ի գիրս բանից աւուրց թագաւորացն
40 Իսրայելի։ Եւ ննջեաց Աքաաբ ընդ հարս
իւր, եւ թագաւորեաց Ոքոզիա որդի
նորա ընդ նորա։
41 Եւ Յովսափատ որդի Ասայի թագա-
ւորեաց ի վերայ Յուդայ, յամին չոր-
րորդի Աքաաբու արքայի Իսրայելի [*]թա-
42 գաւորեաց։ Յովսափատ որդի երեսուն
եւ հինգ ամաց էր ի թագաւորել իւրում,
եւ քսան եւ հինգ ամ թագաւորեաց յԵ-
րուսաղէմ. եւ անուն մօր նորա Ազու-
43 բա դուստր Սաղաղայ։ Եւ գնաց յամե-
նայն ճանապարհս Ասայի հօր իւրոյ, եւ
ոչ խոտորեցաւ ի նմանէ առնել ուղղու-
44 թիւն առաջի Տեառն։ Բայց ի բարձանցն
զի ոչ եբարձ, քանզի տակաւին զոհէր
ժողովուրդն եւ արկանէր խունկս ի վե-
45 րայ բարձանց։ Եւ խաղաղութեամբ էր
Յովսափատ ընդ արքային Իսրայելի։
46 Եւ մնացորդք բանիցն Յովսափատու
եւ զօրութիւնքն զոր արար եւ որչափ
պատերազմեցաւ, ո՞չ աւասիկ գրեալ են
ի գիրս բանից աւուրց թագաւորացն Յու-
47 դայ։ Եւ [6]զաւելորդս նուիրելոցն" որ
մնացին յաւուրս հօր նորա՝ քակեաց
յերկրէն։
48 Եւ թագաւոր ոչ գոյր յԵդովմ հաստա-
տեալ։
49 Եւ արքայ Յովսափատ արար նաւս
Թարսսացիս երթալ յՈփիր զոսկւոյ, եւ
ոչ գնացին, քանզի խորտակեցան նաւքն
50 ի Գասիոնգաբեր։ Յայնժամ ասէ Ոքո-
զիա որդի Աքաաբու ցՅովսափատ, Եր-
թիցեն ծառայք քո ընդ ծառայս [7]իմ, եւ
նաւք քո ընդ նաւս իմ". եւ ոչ կամե-
51 ցաւ Յովսափատ։ Եւ ննջեաց Յովսա-
փատ ընդ հարս իւր, եւ թաղեցաւ առ
հարս իւր ի քաղաքի Դաւթի հօր իւրոյ.
եւ թագաւորեաց Յովրամ որդի նորա
ընդ նորա։
52 Եւ Ոքոզիա որդի Աքաաբու թագա-
ւորեաց ի վերայ Իսրայելի ի Սամարիա,
յամին եւթնուտասներորդի Յովսափա-
տայ արքայի Յուդայ. եւ թագաւորեաց
53 յԻսրայելի ամս երկուս։ Եւ արար չար
առաջի Տեառն, եւ գնաց զճանապարհս
[*]Աքաաբու հօր իւրոյ, եւ զճանապարհս
[*]Յեզաբելայ մօր իւրոյ, եւ ի մեղս տանն
Յերոբովամայ որդւոյ Նաբատայ որ յան-
54 ցոյցն զԻսրայէլ. Եւ ծառայեաց Բահա-
ղիմացն, եւ երկիր եպագ նոցա. եւ
բարկացոյց զՏէր Աստուած Իսրայելի
[8]ըստ ամենայն եղելոցն յառաջ քան զնա"։

[1] Եբր. եւ մեռաւ ընդ երեկս  [2] Եբր. ի ծոց կառացն  [3] Եբր. իւր։ (37) Եւ մեռաւ արքայ, եւ բերաւ  [*] Եբր. դ-լ-ւ  [5] Կամ, զգէնս եւս լուացին

[6] Եբր. զմնացորդն իգացելոց  [7] Եբր. իմ նաւուք
[8] Եբր. ըստ ամենայնի զոր արար հայր նորա

# ԳԼՈՒԽՔ ՉՈՐՐՈՐԴ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

Գլ. Համ.

*քաղու ամս տասն. ի սորա երրորդ ամին ել զառաջինն Նաբուքոդոնոսոր, եւ հնազանդեաց զՀրէաստան, եւ տարաւ զԴանիէլ։ Եւ ի մետասան ամին սորա ել դարձեալ Նաբուքոդոնոսոր, զԵզիակիմ սպան, եւ զՅեքոնիա թագաւորեցոյց։* ԻԴ. 34

*Թագաւորեաց Յեքոնիա որ եւ Յովակիմ ամիսս երիս, եւ աւուրս չորիս։* ԻԴ. 6

*Ել երրորդ անգամ Նաբուքոդոնոսոր, եւ գերի վարեաց զՅեքոնիա որ եւ Յովակիմ, եւ զԵզեկիել ընդ նմա. եւ թագաւորեցոյց զՍեդեկիա որդի Յովսիայ։ Ել չորրորդ անգամ՝ առ զԵրուսաղէմ, կուրացոյց զՍեդեկիա, եւ վարեաց ի Բաբելոն։* ԻԴ. 10

*Զի այրեաց Նաբուզարդան զտաճարն եւ զԵրուսաղէմ, եւ զկահն ամենայն բարձին ի Բաբելոն։* ԻԵ. 8

*Զի կացոյց Նաբուքոդոնոսոր զԳոդողիա ի վերայ մնացորդաց երկրին։* ԻԵ. 22

*Ժողովեցան մնացեալքն առ Գոդողիա. եւ եկն Իսմայէլ Նաթանեանց եւ սպան զԳոդողիա. եւ որ մնացին՝ չոգան մտին յԵգիպտոս։* ԻԵ. 23

*Զի յերեսներորդ եւթներորդ ամի գերութեանն Յովակիմայ՝ որ եւ Յեքոնիա որդի Եզիակիմայ, զուարթացոյց զնա Եւիլմարովդաք։ Սա ծնաւ զՍաղաթիէլ, եւ նա զԶօրաբաբէլ։* ԻԵ. 27



# ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ
## ՉՈՐՐՈՐԴ

### ԳԼՈՒԽ Ա

1 Եւ նշկահեաց Մովաբ զԻսրայէլ յետ
2 մահուանն Աքաաբու։ Եւ անկաւ
Ոքոզիա ի վանդակապատէ վերնատանն
իւրոյ որ ի Սամարիա եւ խօթացաւ. եւ
առաքեաց հրեշտակս, եւ ասէ ցնոսա,
Երթայք հարցէք[1] ի Բահաղ զճանճիկ՝ աս-
տուածն Ակկարոնի, եթէ ապրեցի՞մ ես
յախտէ աստի յայսմանէ։ [2]Եւ գնացին
3 հարցանել ի նմանէ։ Եւ հրեշտակ Տեառն
կոչեաց զԵղիա Թեզբացի եւ ասէ, Արի
երթ ընդ առաջ հրեշտակացն Ոքոզեայ
արքային Սամարիայ, եւ ասասցես ցնո-
սա, Ա՛ռ ի չգոյէ՞ Աստուծոյ ի մէջ Իս-
րայէլի երթայք դուք հարցանել [1]ի Բա-
հաղ զճանճիկ՝ աստուածն Ակկարոնի.
4 [3]Ոչ այդպէս. այլ՝ այսպէս ասէ Տէր,
Ի մահիճս յոր ելեր՝ ոչ իջցես այտի,
այլ ի դմին մահու մեռցիս. եւ չոգաւ
Եղիա [2]եւ ասէ ցնոսա՝։
5 Եւ դարձան հրեշտակքն առ նա. եւ
6 ասէ ցնոսա, Զի՞ է զի դարձարուք։ Եւ
ասեն ցնա, Այր մի ել ընդ առաջ մեր,
եւ ասէ ցմեզ, Երթայք դարձարուք առ
արքայն որ առաքեաց զձեզ, եւ ասաս-
ջի՛ք ցնա, այսպէս ասէ Տէր. Ա՛ռ ի չգոյէ՞
Աստուծոյ ի մէջ Իսրայէլի [4]երթաս հար-
ցանել [1]ի Բահաղ զճանճիկ՝ աստուածն
Ակկարոնի. [3]ոչ այդպէս, այլ՝ ի մահիճս
յոր ելեր՝ ոչ իջցես այտի, այլ մահու
7 մեռցիս։ Եւ խօսեցաւ ընդ նոսա եւ ա-
սէ, Զի՞նչ նշանք են առնն որ ել ընդ
առաջ ձեր, եւ խօսեցաւ ընդ ձեզ զբանսդ
8 զայդոսիկ։ Եւ ասեն ցնա, Այր թաւամա-
ծի, եւ գօտի մաշկեղէն ածեալ ընդ մէջ
իւր։ Եւ ասէ, Եղիա Թեզբացի է այն։
9 Եւ առաքեաց առ նա իշխան յիս-
նապետ եւ զյիսունս նորա, եւ ել ե-
եկն առ նա. եւ Եղիա նստէր ի վերայ
գլխոյ լերինն. եւ խօսեցաւ յիսնապետն
եւ ասէ ցնա, Այրդ Աստուծոյ, արքայ
10 կոչեաց զքեզ, էջ այտի։ Պատաս-
խանի ետ Եղիա եւ ասէ ցյիսնապետն,
Եթէ այր Աստուծոյ իցեմ ես, իջցէ հուր
յերկնից եւ կերիցէ զքեզ եւ զյիսունս
քո։ Եւ էջ հուր յերկնից, եւ եկեր զնա
եւ զյիսունս նորա։
11 Եւ յաւել արքայ առաքել առ նա այլ
յիսնապետ եւ զյիսունս նորա. եւ ել եւ
խօսեցաւ յիսնապետն եւ ասէ ցնա, Այրդ
Աստուծոյ, այսպէս ասէ արքայ, էջ
12 այտի վաղվաղակի։ Պատասխանի ետ Ե-
ղիա եւ ասէ ցնա, Եթէ այր Աստուծոյ
իցեմ, իջցէ հուր յերկնից եւ կերիցէ
զքեզ եւ զյիսունս քո։ Եւ էջ հուր Աս-
տուծոյ յերկնից եւ եկեր զնա եւ զյի-
սունս նորա։
13 Եւ յաւել եւս արքայ առաքել յիսնա-
պետ երրորդ եւ զյիսունս նորա. եւ ել
եկն առ նա յիսնապետն երրորդ, եւ ան-
կաւ ի վերայ ծնգաց իւրոց առաջի Ե-
ղիայի եւ աղաչեաց զնա, եւ խօսեցաւ
ընդ նմա եւ ասէ, Այրդ Աստուծոյ, պա-
տուեսցի անձն իմ եւ անձինք ծառայից
քոց այսոցիկ յիսնիցս առաջի աչաց քոց.
14 Զի ահա անկաւ հուր յերկնից եւ եկեր
զերկուս յիսնապետսն զառաջինսն եւ
զյիսունս նոցա. եւ արդ [5]պատուեսցին
անձինք ծառայից քոց՝ յաչս քո։
15 Եւ խօսեցաւ հրեշտակ Տեառն ընդ
Եղիայի եւ ասէ, Էջ ընդ դմա, եւ մի՛
երկնչիցիս յերեսաց [6]նոցա. եւ յարեաւ
16 Եղիա եւ էջ ընդ նմա առ արքայ։ Եւ
խօսեցաւ ընդ [7]նմա եւ ասէ՝, Փոխա-
նակ զի առաքեցեր հրեշտակս հարցա-
նել [1]ի Բահաղ զճանճիկ՝ աստուածն Ակ-
կարոնի, որպէս առ ի չգոյէ Աստուծոյ ի
մէջ Իսրայէլի հարցանել ի նմանէ, [3]ոչ
այդպէս, այլ՝ ի մահիճս յոր ելեր՝ մի՛

[1] Ոմն. զԲահաղ ճանճիկ [2] Յոմն. պակաս [3] Ոմն. Վասն այսորիկ [4] Ոմն. առաքես դու

[5] Ոմն. պատուեսցի անձ իմ [6] Ոմն. նորա [7] Ոմն. նմա. Այսպէս ասէ Տէր

իջցես այտի, այլ մահու մեռցիս։
17 Եւ մեռաւ ըստ բանին Տեառն զոր
խօսեցաւ Եղիա։ [1]Եւ Յովրամ որդի Աքաա-
բու թագաւորէ ի վերայ Իսրայէլի ի Սա-
մարիա ամս երկոտասան, յամի ութու-
տասներորդի Յովսափատայ արքայի Յու-
դայ. եւ արար չար առաջի Տեառն, բայց
ոչ իբրեւ զեղբարս իւր եւ ոչ իբրեւ զմայր
իւր։ Եւ եբարձ զարձանսն Բահաղու զոր
արար հայր նորա, եւ խորտակեաց զնո-
սա։ Սակայն ի մեղս տանն Յերոբովա-
մայ որ յանցոյցն զԻսրայէլ՝ յարեցաւ,
եւ ոչ մեկնեցաւ ի նոցանէն. եւ սրտմտե-
ցաւ բարկութեամբ Տէր ի վերայ տանն
Աքաաբու" Եւ թագաւորեաց Յովրամ
[1]եղբայր նորա" ընդ նորա, յամի երկ-
րորդի Յովրամայ արքայի Յուդայ՝ որդ-
ւոյ Յովսափատու, զի ոչ գոյր նորա որդի։
18 Եւ մնացորդք բանիցն Ոքոզեայ [1]եւ
ամենայն ինչ" զոր արար, ո՞չ ահաւասիկ
գրեալ են ի գիրս բանից աւուրց թա-
գաւորացն Իսրայէլի։

Գլ. Բ

1 Եւ եղեւ ի վերացուցանել Տեառն զԵ-
ղիա [2]շարժմամբ յերկինս, եւ գնացին
2 Եղիա եւ Եղիսէ ի Գաղգաղայ։ Եւ ա-
սէ Եղիա ցԵղիսէ, Նիստ դու աստ, զի
Տէր առաքեաց զիս ի Բեթէլ։ Եւ ասէ
Եղիսէ, Կենդանի է Տէր եւ կենդանի
է անձն քո՝ եթէ թողից զքեզ. եւ [3]եկին
3 ի Բեթէլ։ Եւ եկին որդիք մարգարէիցն
որ ի Բեթէլ՝ առ Եղիսէ, եւ ասեն ցնա,
թէ Գիտիցե՞ս զի այսօր առնու Տէր զտէրդ
ի գլխոյ քումմէ. եւ ասէ, Գիտեմ եւ ես,
4 լուռ լերուք։ Եւ ասէ Եղիա ցԵղիսէ,
Նիստ դու աստ, զի Տէր առաքեաց զիս
յԵրիքով։ Եւ ասէ, Կենդանի է Տէր եւ
կենդանի է անձն քո՝ եթէ թողից զքեզ.
5 եւ եկին յԵրիքով։ Եւ մատեան որդիք
մարգարէիցն որ յԵրիքով առ Եղիսէ,
եւ ասեն ցնա, եթէ Գիտիցե՞ս զի այսօր
առնու Տէր զտէրդ ի գլխոյ քումմէ. եւ
6 ասէ, Գիտեմ եւ ես, լուռ լերուք։ Եւ
ասէ ցնա Եղիա, Նիստ դու աստ, զի
Տէր առաքեաց զիս ի Յորդանան։ Եւ
ասէ Եղիսէ, Կենդանի է Տէր եւ կեն-
դանի է անձն քո՝ եթէ թողից զքեզ.
7 եւ գնացին երկոքեան։ Եւ յիսուն այր
յորդւոց մարգարէիցն[4], եւ կացին ի հան-
դիպոջ ի բացեայ. եւ երկոքեան կացին
8 յեզերն Յորդանանու։ Եւ ա՛ռ Եղիա զմաշ-
կեակն իւր, ծալեաց եւ եհար զջուրն, եւ
բաժանեցաւ ջուրն յայսկոյս եւ յայնկոյս,
եւ անցին երկոքեան ընդ ցամաք։
9 Եւ եղեւ ընդ անցանելն նոցա, ասէ
Եղիա ցԵղիսէ, Խնդրեա զի՛նչ արարից
քեզ, մինչչեւ վերացեալ իցեմ ի քէն։
Եւ ասէ Եղիսէ, Եղիցի կրկին ոգիդ քո
10 ի վերայ իմ։ Եւ ասէ Եղիա, Դժուա-
րինս խնդրեցեր, բայց եթէ տեսցես զիս
յամբառնալն իմում ի քէն, եղիցի այն-
պէս, ապա թէ ոչ մի՛ եղիցի։
11 Եւ եղեւ մինչդեռ գնային նոքա, եր-
թային եւ խօսէին, եւ ահա կառք հրե-
ղէնք եւ երիվարք հրեղէնք, եւ անջրպե-
տեցին ի մէջ երկոցունց. եւ վերացաւ
12 Եղիա [2]շարժմամբ յերկինս։ Եւ Եղիսէ
հայէր եւ աղաղակէր, Հայր, հայր, կառքդ
Իսրայէլի եւ հեծեալքդ նորա. եւ այլ
ոչ եւս ետես զնա. եւ բուռն եհար զհան-
դերձից իւրոց, եւ պատառեաց յերկուս
13 ծուէնս։ Եւ ա՛ռ Եղիսէ զմաշկեակն Ե-
ղիայի [5]զոր ընկէց ի վերայ նորա". եւ
դարձաւ Եղիսէ, եւ եկաց առ եզերն
14 Յորդանանու։ Եւ առ զմաշկեակն Ե-
ղիայի [5]զոր ընկէց ի վերայ նորա", եւ
եհար զջուրսն եւ ասէ, Ո՞ւր ես, Տէր
Աստուած Եղիայի [6]ափփով. եւ եհար
զջուրսն, եւ բաժանեցան յայսկոյս եւ
յայնկոյս, եւ անց Եղիսէ։
15 Իբրեւ տեսին որդիք մարգարէիցն որ
յԵրիքով ի հանդիպոյն, եւ ասեն, Հան-
գեաւ ոգին Եղիայի ի վերայ Եղիսէի.
եւ եկին ընդ առաջ նորա, եւ երկիր
16 պագին նմա ի վերայ երկրի։ Եւ ասեն
ցնա, Ահաւասիկ են ընդ ծառայս քո
որդիք զօրութեան արք յիսուն. երթի-
ցեն եւ խնդրեսցեն զտէրն քո, գուցէ
առ զնա Հոգի Տեառն, եւ ընկէց զնա
[1]առ Յորդանանու, կամ" ի վերայ միոյ
ուրուք լերանց, կամ ի վերայ միո՛յ ու-
րուք [7]բլրոյ. եւ ասէ Եղիսէ, Մի՛ ա-
17 ռաքէք։ Եւ բռնադատեցին զնա մինչեւ
ամաչէր, եւ ասէ, Առաքեցէք։ Եւ ա-
ռաքեցին յիսուն այր, եւ խնդրեցին զե-
18 րիս աւուրս, եւ ոչ գտին զնա. Եւ դար-
ձան առ նա, եւ նա նստէր յԵրիքով.

[1] Յեբր. պակասի  [2] Եբր. մրրկաւ  [3] Եբր. իջին
[4] Եբրայեցին յաւելու, չոգան  [5] Եբր. որ անկաւ ի նմանէ  [6] Նշանակէ ինքն իսկ  [7] Եբր. հովտաց

եւ ասէ ցնոսա Եղիսէ, Ո՞չ ասացի ձեզ
թէ Մի՛ երթայք ։
19 Եւ ասեն արք քաղաքին ցԵղիսէ,
Ահաւասիկ բնակութիւն քաղաքիս բա-
րի է, որպէս եւ տէրդ իսկ տեսանէ,
եւ ջուրքս չար եւ երկիրս անզաւակ ։
20 Եւ ասէ Եղիսէ, Առէք առ իս կուժ
մի նոր, եւ դիք [1]այդր ․ եւ բերին առ
21 նա ։ Եւ ել Եղիսէ յականս ջուրցն, եւ
արկ անդ աղ եւ ասէ, Այսպէս ասէ Տէր,
Բժշկեմ զջուրդ զայդոսիկ, եւ մի՛ եւս
22 լիցի այտի մահ եւ անզաւակութիւն ։ Եւ
բժշկեցան ջուրքն մինչեւ ցայսօր ըստ
բանին Եղիսէի զոր խօսեցաւ ։
23 Եւ ել անտի ի Բեթէլ ․ եւ մինչդեռ
ելանէր զճանապարհն, մանկտի մանրիկ
ելին ի քաղաքէն, աղաղակէին ի նա եւ
24 ասէին, Ել կնտակ, ել կնտակ ։ Դարձաւ ի
թիկունս իւր եւ ետես զնոսա ․ եւ անէծ
զնոսա յանուն Տեառն [2]եւ ասէ, Որդիք
յանցանաց եւ զատապարտութեան" ։ Եւ ելին
երկու արջք յանտառէն եւ պատառեցին
ի նոցանէ քառասուն եւ երկուս ման-
25 կունս ։ Եւ գնաց անտի ի լեառն ի Կար-
մեղոս, եւ անտի դարձաւ ի Սամարիա ։

ԳԼ. Գ

1 Եւ Յովրամ որդի Աքաաբու թագաւո-
րեաց ի վերայ Իսրայէլի ի Սամարիա,
յամի ութեւտասներորդի Յովսափատայ
արքայի Յուդայ ․ եւ թագաւորեաց ամս
2 երկոտասան ։ Եւ արար չար առաջի
Տեառն, բայց ոչ իբրեւ զհայր իւր, եւ
ոչ իբրեւ զմայր իւր ․ եւ կործանեաց
զարձանսն [3]իւր զոր արար հայր նորա ։
3 Սակայն ի մեղս Յերոբովամայ որդւոյ
Նաբատայ որ յանցոյցն զԻսրայէլ՝ յարե-
ցաւ, եւ ոչ մեկնեցաւ ի նոցանէ ։
4 Եւ Մովսա արքայ Մովաբայ էր [4]նեկաթ,
եւ տայր արքային Իսրայէլի [2]հարիւր՝
հարիւր հազար [5]մաքեաց եւ հարիւր
5 հազար խոյոց գեղմնաւորաց ։ Եւ եղեւ
յետ մեռանելոյ Աքաաբու, նշկահեաց
արքայն Մովաբու զարքայն Իսրայէլի ։
6 Եւ ել արքայ Յովրամ յաւուր յայնմիկ
ի Սամարիայ, եւ հանդէս արար Իսրա-
7 յէլի, Եւ գնաց, եւ առաքեաց առ Յովսա-
փատ արքայ Յուդայ եւ ասէ, Արքայ Մո-
վաբու նշկահեաց զիս, եթէ երթայցե՞ս ընդ
իս ի պատերազմ ի վերայ Մովաբու ։ Եւ
ասէ, Ելից ․ զի որպէս դու՝ եւ ես, եւ
որպէս զօրք քո՝ զօրք իմ, եւ որպէս երի-
8 վարք քո՝ երիվարք իմ ։ Եւ ասէ, Ընդ ո՞ր
ճանապարհ ելից ։ Եւ ասէ, Ընդ ճանապարհ
9 անապատին Եդովմայ ։ Եւ գնաց արքայն
Իսրայէլի եւ արքայն Յուդայ, եւ արքայն
Եդովմայ ․ եւ պատեցան զաւթն օր ի
ճանապարհին, եւ ոչ գոյր ջուր ի բանա-
կին, եւ ոչ անասնոցն որ ընդ նոսա ։
10 Եւ ասէ արքայն Իսրայէլի, Ո՛հ, [6]պա-
չարեաց Տէր զերիս թագաւորս եկեալ՝
11 տալ զնոսա ի ձեռս Մովաբայ ։ Եւ ասէ
Յովսափատ, Ո՞չ գուցէ աստ մարգարէ
Տեառն, եւ հարցցուք զՏէր նովաւ ․ եւ
պատասխանի ետ մի ոմն ի մանկտւոյն
արքայի Իսրայէլի եւ ասէ, Է աստ Ե-
ղիսէ որդի Սափատայ որ արկանէր ջուր
12 ձեռաց Եղիայի ։ Եւ ասէ Յովսափատ,
Գոյ բան Տեառն ընդ նմա ․ եւ իջին առ
նա արքայն Իսրայէլի եւ Յովսափատ [2]ար-
13 քայն Յուդայ" եւ արքայն Եդովմայ ։ Եւ
ասէ Եղիսէ ցարքայն Իսրայէլի, Զի՞
կայ իմ եւ քո ․ երթ առ մարգարէս հօր
քո եւ առ մարգարէս մօր քո ։ Եւ ասէ
ցնա արքայն Իսրայէլի, [7]Միթէ արգելուք
կոչեա՞ց" Տէր զերիս թագաւորս եկեալ՝
14 տալ զնոսա ի ձեռս Մովաբու ։ Եւ ասէ
Եղիսէ, Կենդանի է Տէր զօրութեանց
որոյ կացի առաջի նորա, եթէ չէր ա-
ռեալ ակն Յովսափատայ արքայի Յու-
դայ, եթէ բնաւ հայէի իսկ ի քեզ եւ
15 տեսանէի զքեզ ։ Բայց արդ ած առ իս
սաղմոսասաց ․ եւ եղեւ իբրեւ նուա-
գեաց սաղմոսասացն, եկն ի վերայ նո-
16 րա ձեռն Տեառն, Եւ ասէ, Այսպէս ա-
սէ Տէր ․ Արարէք զհեղեղատդ վայր դուբս
17 դուբս ․ Զի այսպէս ասէ Տէր ․ Ոչ տե-
սանիցէք հողմ, եւ ոչ տեսանիցէք անձ-
րեւ ․ եւ հեղեղատդ լցցի ջրով, եւ արբ-
ջիք դուք եւ անասուն ձեր եւ գրաստ
18 ձեր ։ Եւ թեթեւ է այդ յաչս Տեառն ․
19 եւ [8]մատնեցից զՄովաբ ի ձեռս ձեր ․ Եւ
հարջիք զամենայն քաղաք ամրացեալ եւ
զամենայն քաղաք ընտիր, եւ զամենայն
ծառ զազնիւ կոտորեսջիք, եւ զամե-
նայն աղբեւրս ջրոց խցջիք եւ զամենայն
վիճակս բարիս անպիտանացուսջիք քա-
20 րամբք ։ Եւ եղեւ ընդ առաւօտն յորժամ
զոհն ելանէր, եւ ահա ջուրք գային [9]յե-

[1] Եբր. այդր աղ [2]Յ Եբր. գո—ե [3] Եբր. Բա-հաղու [4] Նոքեդ, շպետ (խաշնարած) [5] Եբր. գառանց

[6] Եբր. զի կոչեաց . [7] Եբր. Ոչ, զի կոչեաց [8] Եբր. մատնեսցէ [9] Եբր. ի ճանապարհէն

ւիցն Եդովմայ, եւ լցաւ երկիրն ջրով։
21 Եւ ամենայն Մովաբ լուաւ եթէ ելին
թագաւորքն պատերազմել ընդ նոսա,
եւ ելին յամենայն գօտեածուաց եւ ի
վեր, եւ կացին առ սահմանաւն, եւ կան-
22 նեցին ընդ առաւօտն։ Եւ ծագեաց ա-
րեւ ի վերայ ջրոյն, եւ ետես Մովաբ
ի հանդիպոյն զջուրսն կարմիր իբրեւ
23 զարիւն, Եւ ասեն, [1]Արիւնն այն սրոյ
է. կռուեցան ընդ միմեանս" թագա-
ւորքն, եւ հարին այր զընկեր իւր. եւ
24 արդ՝ հասցուք յաւար, Մովաբ։ Եւ մտին
ի բանակն Իսրայելի. եւ յարեան Իսրա-
յելացիքն եւ հարին զՄովաբ. եւ փա-
խեան յերեսաց նոցա, եւ մտանելով
25 մտանէին եւ հարկանէին զՄովաբ. Եւ
զքաղաքսն կործանեցին, եւ յամենայն
վիճակ բարի ընկեցին այր իւրաքանչիւր
զքար իւր, եւ լցին զնա. եւ զամենայն
ակունս ջրոց խցին, եւ զամենայն փայտ
զաղնիւ հարին, [2]մինչեւ թողուլ զքարինս
որմոյն քակեալս", եւ պատեցան պար-
26 սաւորք եւ հարին զնա։ Եւ ետես արքայն
Մովաբու եթէ սաստկացաւ քան զնա
պատերազմն, առ ընդ իւր եւթն հարեւր
այր սուսերամերկս, հատանել երթալ առ
27 արքայն Եդովմայ, եւ ոչ կարացին։ Եւ
առ զորդին իւր զանդրանիկն՝ [3]արքայն,
զոր թագաւորելոց փոխանակ իւր", եւ
եհան զնա ողջակէզ ի վերայ պարսպին. եւ
եղեւ [4]զլիզջ մեծ ի վերայ Իսրայելի, եւ չուե-
ցին ի նմանէ եւ դարձան յերկիր իւրեանց։

ԳԼ. Դ

1 Եւ կին մի ի կանանց որդւոց մարգա-
րէիցն աղաղակէր առ Եղիսէ եւ ասէր,
Ծառայ քո, այր իմ մեռաւ. եւ դու գի-
տես զի ծառայ քո էր երկիւղած
ի Տեառնէ. եւ փոխատուն եկն առնուլ
զերկոսին զորդիս իմ իւր ի ծառայութիւն։
2 Եւ ասէ ցնա Եղիսէ, Զի՞նչ արարից
քեզ. պատմեա ինձ զի՞նչ կայ ի տան
քում։ Եւ նա ասէ, Ոչ գոյ ի տան ա-
ղախնոյ քո եւ ոչ ինչ, բայց եւղ սրով
3 օծանիցիմ։ Եւ ասէ ցնա, Երթ խնդրեա
քեզ ամանս յամենայն դրացեաց քոց՝ ա-
մանս ունայնս եւ մի սակաւացուցանի-
4 ցես. Եւ մտցես եւ փակեսցես զդուրսն
ընդդէմ քո եւ ընդդէմ որդւոց քոց, եւ
արկցես յամենայն ամանսն մինչեւ լցցին,
5 եւ առցես։ Եւ գնաց ի նմանէ, եւ փա-
կեաց զդուռն ընդդէմ իւր եւ ընդդէմ
որդւոց իւրոց. նոքա մատուցանէին առ
6 նա, եւ նա արկանէր։ Մինչեւ լցան ա-
մանքն, եւ ասէ ցորդին իւր, Մատու-
ցէք առ իս եւ այլ աման, եւ ասեն ցնա,
7 Ոչ է այլ աման. եւ եկաց եւղն։ Եւ
չոգաւ պատմեաց առն Աստուծոյ. եւ
ասէ Եղիսէ, Երթ վաճառեա զեւղն,
եւ հատուսցես [5]զտոկոսիսն քո. եւ դու
եւ որդիք քո կեցջիք մնացելով իւղովն։
8 Եւ եղեւ օր, եւ անց Եղիսէ ի Սոմնա.
եւ անդ էր կին մի մեծ, եւ կալաւ զնա
ուտել հաց. եւ լինէր ի չափ ժամանա-
կէ ի մտանել իւրում անդր, խոնարհէր ու-
9 տել [6]եւ ըմպել"։ Եւ ասէ կինն ցայր իւր,
Գիտեմ զի այրն Աստուծոյ սուրբ է, եւ
10 ճանապարհ նորա առ մեզ է. Արասցուք
նմա վերնատուն մի փոքրիկ, եւ դիցուք
ի նմա մահիճս եւ սեղան եւ աթոռ եւ
աշտանակ. եւ եղիցի ի գալ նորա առ
11 մեզ մացէ անդր։ Եւ եղեւ օր, եւ եկն
անդր, եւ եմուտ ի վերնատունն եւ
12 ննջեաց անդ. Եւ ասէ ցԳէեզի ցպա-
տանեակն իւր, Կոչեա առ իս զՍոմնա-
ցին զայն. եւ կոչեաց զնա, եւ եկաց
13 առաջի նորա։ Եւ ասէ ցպատանին, Ա-
սա ցնա. Ահա կազմեցեր մեզ զայս ա-
մենայն կազմած, զի՞նչ պարտ իցէ առ-
նել քեզ. եթէ իցէ՞ն քո բանք ինչ առ
արքայ եւ կամ առ իշխան զօրուն. եւ
նա ասէ, Ի մէջ ժողովրդեան իմոյ բնա-
14 կեալ եմ ես։ Եւ ասէ, Զի՞նչ պարտ ի-
ցէ առնել նմա։ Եւ ասէ Գէեզի [7]պատա-
նեակն նորա, Եւ կարի իսկ քաջ, քան-
զի որդի ոչ գոյ նորա, եւ այրն իւր չէ
15 ինչ ծեր"։ Եւ ասէ, Կոչեա զնա։ Եւ կո-
16 չեաց զնա, եւ եկաց առ դուրսն։ Եւ
ասէ ցնա Եղիսէ, Ի ժամանակի յայս-
միկ [8]ի սոյն աւուրս" ունիցիս ի գիրկս
մանուկ։ Եւ նա ասէ, Մի՛, տէր, այրդ
Աստուծոյ, մի՛ ստեր աղախնոյ քում։
17 Եւ յղացաւ կինն, եւ ծնաւ որդի ի ժա-
մանակի յայնմիկ, [8]մինչդեռ կենդանի
էր", որպէս խօսեցաւ ընդ նմա Եղիսէ։
18 Եւ [9]հաստատեցաւ մանուկն. եւ ե-
ղեւ իբրեւ ել նա առ հայր իւր ի հնձօղսն,
19 Ասէ ցհայր իւր, Գլո՜ւխ իմ, գլո՜ւխ իմ.

[1] Եբր. Արիւն է այս. կործանելով կործանեցան
[2] Եբր. թողին միայն զքարինս Կիրհարեսեթայ
[3] Եբր. որ թագաւորելոց էր փոխանակ նորա
[4] Եբր. ցասումն

[5] Եբր. զպարտս [6] Եբր. հաց [7] Եբր. Արդարեւ որդի ոչ գոյ նորա, եւ այր նորա ծեր է [8] Եբր. ըստ ժամանակի կենաց [9] Եբր. աճեաց

եւ ասէ ցպատանին, Տար զդա առ մայր
20 իւր ։ Եւ տարաւ զնա առ մայր իւր, եւ
ննջեաց ի վերայ ծնգաց նորա մինչեւ ցմի-
21 ջօրեայ, եւ մեռաւ ։ Եւ եհան զնա, եւ
կողմնեցոյց ի մահիճս առնն Աստուծոյ, եւ
22 փակեաց ընդդէմ նորա եւ ել. Եւ կոչեաց
զայր իւր եւ ասէ, Առաքեա առ իս զմի
ոք ի մանկանցդ, եւ էշ մի յիշոցդ, եւ
ընթացայց մինչեւ առ այրն Աստուծոյ
23 եւ դարձայց ։ Եւ ասէ, Զի՞ է զի երթաս
դու առ նա այսօր, զի ոչ ամսամուտ է
եւ ոչ շաբաթ ։ Եւ նա ասէ, Ողջոյն է ։
24 Եւ հանդերձեաց զէշն, եւ ասէ ցպա-
տանին իւր, Վարեա եւ գնա. եւ [1]մի՛
ունիր ինչ երկանել ի գա՞. բայց եթէ ա-
սացից [2]քեզ՝ թէ Եկ այսր, եւ եկեսցես ։
25 Եւ երթիցես՞ առ այրն Աստուծոյ ի
լեառնն ի Կարմեղոս. եւ եղեւ իբրեւ ե-
տես [3]Եղիսէ զգալ նորա առ նա, ասէ
ցԳէեզի ցպատանեակն իւր, Ահա այն
26 Սոմնացին է. Ընթա ընդ առաջ նորա
եւ ասասցես, Ողջո՞յն է քեզ, եւ ողջո՞յն
է առն քում, եւ ողջո՞յն է մանկանն ։
27 Եւ նա ասէ, Ողջոյն է ։ Եւ եկն առ [3]Ե-
ղիսէ ի լեառնն, եւ բուռն եհար զոտից
նորա. եւ մատեաւ Գէեզի մերժել զնա.
եւ ասէ [3]Եղիսէ, Թոյլ տուր դմա, զի
անձն դորա ցաւագին է. եւ Տէր թա-
28 քոյց յինէն եւ ոչ պատմեաց ինձ ։ Եւ
նա ասէ, Միթէ խնդրեցի՞ որդի ի տեառ-
նէ իմմէ. ո՞չ ասացի թէ Մի՛ խաբեր զիս ։
29 Եւ ասէ Եղիսէ ցԳէեզի, Ած զօտի ընդ
մէջ քո, եւ առ զցուպդ իմ ի ձեռին քո
եւ երթ. եւ եթէ գտանիցես զայր ոք՝
մի՛ օրհնեսցես զնա, եւ եթէ օրհնեսցէ
զքեզ այր ոք՝ մի՛ տացես նմա պատաս-
խանի. եւ դիցես զցուպդ իմ ի վերայ
30 երեսաց մանկանն ։ Եւ ասէ մայր ման-
կանն, Կենդանի է Տէր եւ կենդանի է
անձն քո, եթէ թողից զքեզ ։ Եւ յա-
31 րեաւ Եղիսէ եւ գնաց զհետ նորա ։ Եւ
Գէեզի անց առաջի նոցա, եւ եդ զցուպն
ի վերայ երեսաց մանկանն, եւ ոչ գոյր
բարբառ եւ ոչ լսել. եւ դարձաւ ընդ առաջ
նորա, պատմեաց նմա եւ ասէ, Ոչ յա-
32 րեաւ մանուկն ։ Եւ եմուտ Եղիսէ ի
տունն, եւ ահա մանուկն մեռեալ, եւ
33 կողմնեցուցեալ ի մահիճս նորա ։ Եւ ե-
մուտ Եղիսէ ի տունն, եւ փակեաց
զդուրսն ընդդէմ երկոցունց. եւ եկաց
34 յաղօթս առ Տէր. Եւ ել եւ անկաւ ի
վերայ մանկանն, եւ եդ զբերան իւր ի
վերայ բերանոյ նորա, եւ զաչս իւր ի
վերայ աչաց նորա, եւ զձեռս իւր ի վե-
րայ ձեռաց նորա. եւ կծկեցաւ ի վերայ
35 նորա, եւ ջեռաւ մարմին մանկանն ։ Եւ
դարձաւ եւ զգնացաւ ի տանն յայսկոյս
եւ յայնկոյս, եւ ել եւ [4]ծածկեաց զմա-
նուկն՞ մինչեւ ցեւթն անգամ. եւ եբաց
36 մանուկն զաչս իւր ։ Եւ բարբառեցաւ
Եղիսէ առ Գէեզի եւ ասէ, Կոչեա այսր
զՍոմնացին. եւ կոչեաց զնա. եւ եմուտ
առ նա. եւ ասէ Եղիսէ, Առ զորդի
37 քո ։ Եւ եմուտ կինն եւ անկաւ առ ոտս
նորա, եւ երկիր եպագ նմա յերկիր. եւ
առ զորդին իւր եւ ել ։
38 Եւ Եղիսէ դարձաւ ի Գաղգաղա. եւ
սով էր յերկրին, եւ որդիք մարգարէիցն
նստէին առաջի նորա. եւ ասէ Եղիսէ
ցպատանեակն իւր, Կառո դու զսանն
մեծ, եւ եփեա եփոյ որդւոց մարգա-
39 րէիցդ ։ Եւ [5]ել յանդն քաղել [6]արիօղթ.
եւ եգիտ որթ յանդին, եւ քաղեաց ի
նմանէ [7]աղուխ լի շալակաւ իւրով, եւ
եկն եւ արկ ի սան եփոյին, քանզի ոչ
40 [8]ճանաչէր ։ Եւ արկ առաջի նոցանց ու-
տել. եւ եղեւ յուտել նոցա յեփոյէ ան-
տի, աղաղակեցին եւ ասեն, Մահ է ի
սանի աստ, այր Աստուծոյ. եւ ոչ կա-
41 րացին ուտել ։ Եւ ասէ, Առէք ալեւր
եւ արկէք ի սան այդր ։ Եւ ասէ [9]Եղիսէ
ցԳէեզի ցպատանեակն իւր՞, Արկ առաջի
ժողովրդեանդ եւ կերիցեն. եւ ոչ եղեւ
վնաս ինչ ի սանէ անտի ։
42 Եւ եկն այր [10]ի Բեթսարիսայ, եւ եբեր
առն Աստուծոյ նկանակս յառաջնոց
արմտեաց, նկանակս [11]գարեղէնս, եւ
պաղատիտս՞ բակեղաթաւ ։ Եւ ասէ,
43 Տուք ժողովրդեանդ եւ կերիցեն ։ Եւ
ասէ սպասաւորն նորա, Զի՞նչ տաց զայս
առաջի հարիւրոց արանց. եւ ասէ,
Տուր ժողովրդեանդ եւ կերիցեն. զի
այսպէս ասէ Տէր, Կերիցեն եւ նշխա-
44 րեսցեն ։ Եւ եդ առաջի նոցա եւ կերան,
եւ թողին նշխար ըստ բանին Տեառն ։

[1]Եբր. մի՛ յամեցուցանես զիս ի գնալն [2]Եբր. քեզ. (25) Եւ չոգաւ եւ եկն [3]Եբր. այրն Աստուծոյ

[4]Եբր. կծկեցաւ ի վերայ նորա, եւ փռնգաց մանուկն [5]Եբր. ել ոմն [6]Նշանակէ խոտ [7]Եբր. վարունգ վայրի [8]Եբր. ճանաչէին [9]Յեբր. պակասէ [10]Եբր. ի Բաաղ-սաղիսայ [11]Եբր. գարեղէնս քսան, եւ հասկս ատոքս դալարս

## Գլ. Ե

1 Եւ Նէեման իշխան զօրուն Ասորւոց էր
այր մեծ առաջի տեառն իւրոյ, եւ [1]սքան-
չելի երեսօք՝՝. զի նովաւ ետ Տէր փրկու-
թիւն Ասորւոց. եւ այրն հզօր զօրու-
2 թեամբ էր, եւ բորոտեալ։ Եւ Ասորիքն
մեկնեալ էին ասպատակաւ, եւ գերեցին յերկ-
րէն Իսրայէլի աղջիկ մի փոքրիկ, եւ էր
3 առ կնոջն Նէեմանայ։ Եւ ասէ ցտիկինն
իւր, Ցանկա՛ր, երթայր տէրդ իմ առա-
ջի մարգարէին [2]Աստուծոյ որ ի Սամա-
րիա, եւ անդէն բուժէր զնա ի բորո-
4 տութենէ իւրմէ։ Եւ եմուտ եւ պատ-
մեաց տեառն իւրում եւ ասէ, Այսպէս
եւ այսպէս խօսեցաւ աղջիկն որ յերկ-
5 րէն Իսրայէլի։ Եւ ասէ արքայն Ասոր-
ւոց ցՆէեման, Երթ, եւ ես առաքեցից
հրովարտակս առ արքայն Իսրայէլի։ Եւ
գնաց, եւ առ ի ձեռին իւրում տասն
տաղանդ արծաթոյ, եւ վեց հազար [3]դա-
հեկան, եւ տասն պատմուճան հանդեր-
6 ձեալ։ Եւ տարաւ հրովարտակս առ ար-
քայն Իսրայէլի, եւ էր գրեալ այսպէս.
Արդ իբրեւ հասցէ առ քեզ հրովարտակդ
այդ, ահա առաքեցի առ քեզ զՆէեման
ծառայ իմ, եւ բուժեսցես զդա ի բորո-
7 տութենէ իւրմէ։ Եւ եղեւ իբրեւ ընթեր-
ցաւ արքայն Իսրայէլի զհրովարտակն,
պատառեաց զհանդերձս իւր եւ ասէ, Միթէ
Աստուա՞ծ իցեմ ես սպանանել կամ կեցու-
ցանել, զի առաքեաց առ իս բուժել զայրդ
ի բորոտութենէ իւրմէ. բայց գիտասջիք
եւ տեսջիք զի պատճառի ինեւ նա առ իս։
8 Եւ եղեւ իբրեւ լուաւ Եղիսէ այրն
Աստուծոյ եթէ պատառեաց արքայն Իս-
րայէլի զհանդերձս իւր, առաքեաց առ
արքայն Իսրայէլի եւ ասէ, Ընդէ՞ր պա-
տառեցեր զհանդերձս քո. եկեսցէ առ
իս [2]Նէեման, եւ գիտասցէ թէ գոյ մար-
9 գարէ յԻսրայէլի։ Եւ եկն Նէեման երի-
վարօք եւ կառօք, եւ եկաց առ դուրս
10 տանն Եղիսէի։ Եւ առաքեաց Եղիսէ
առ նա հրեշտակ եւ ասէ, Երթ լուա եւթն
անգամ ի Յորդանան, եւ դարձցի մար-
11 մին քո եւ սրբեսցիս։ Եւ բարկացաւ
Նէեման, գնաց եւ ասէ, Ես ասէի, թէ
բնաւ ելցէ առ իս, եւ կացցէ եւ կար-
դասցէ զանուն Տեառն Աստուծոյ իւ-
րոյ, եւ [4]դիցէ զձեռն իւր ի վերայ տեղ-
12 ւոյն եւ բուժեսցէ զբորոտութիւնս։ Ո՞չ
լաւ իցեն Աբանա եւ Փարփարա գետք
Դամասկոսի քան զամենայն ջուրս Իս-
րայէլի. եւ ընդէ՞ր ոչ երթայցց եւ լուա-
ցայց ի նոսա եւ սրբեցայց. եւ դարձաւ
13 եւ գնաց սրտմտութեամբ։ Եւ մատեան
ծառայք նորա եւ խօսեցան ընդ նմա,
եւ ասեն ցնա, Հայր, եթէ մեծ ինչ բան
խօսեցեալ էր ընդ քեզ մարգարէին, ո՞չ
ապաքէն պարտ էր առնել. թող թէ զի
14 ասաց՝ Լուացիր եւ սրբեսցիս։ Եւ էջ
Նէեման եւ մկրտեցաւ ի Յորդանան եւթն
անգամ ըստ [5]բանին Եղիսէի՝՝. եւ դար-
ձաւ մարմին նորա իբրեւ զմարմին ման-
կան մատաղոյ եւ սրբեցաւ։
15 Եւ դարձաւ առ [6]Եղիսէ ինքն եւ ա-
մենայն բանակն իւր, եւ եկն եկաց ա-
ռաջի նորա եւ ասէ, Ահա գիտացի թէ
ոչ գոյ Աստուած յամենայն երկրի բայց
միայն ի մէջ Իսրայէլի. եւ արդ առ
16 օրհնութիւն ի ծառայէ քումմէ։ Եւ ասէ
Եղիսէ, Կենդանի է Տէր որոյ կացի ա-
ռաջի նորա, եթէ առից ինչ. եւ ստի-
պեաց զնա առնուլ, եւ ոչ հաւանեցաւ։
17 Եւ ասէ Նէեման, Իսկ որովհետեւ ոչ,
տացին ծառայի քում բեռինք զուգից
ջորւոց ի հողոյ երկրիս, զի ոչ եւս ա-
րասցէ ծառայ քո ողջակէզս եւ զոհս
աստուածոց օտարաց, բայց միայն Տեառն։
18 Վասն բանիս այսորիկ քաւեսցէ Տէր
զծառայ քո ի մտանել տեառն իմոյ ի
տուն Ռեմմանայ երկիր պագանել նմա
յորժամ յենուցու ի ձեռս իմ, եւ երկիր
պագանիցեմ ի տան Ռեմմանայ ի պագա-
նելն նորա երկիր ի տան Ռեմմանայ. քա-
ւեսցէ Տէր զծառայ քո վասն բանիդ այ-
19 նորիկ։ Եւ ասէ Եղիսէ ցՆէեման, Երթ
խաղաղութեամբ. եւ գնաց ի նմանէ
[7]յերկրէն Իսրայէլի՝՝։
20 Եւ ասէ Գիեզի պատանեակն Եղի-
սէի[8], Ահա խնայեաց տէր իմ ի Նէեման
Ասորի, չառնուլ ի ձեռանէ նորա յորոց
մատոյցն. կենդանի է Տէր, եթէ ոչ ըն-
թացայց զհետ նորա եւ առից ինչ ան-
21 տի։ Եւ ընդեցաւ Գիեզի զհետ Նէեմա-
նայ. եւ ետես զնա Նէեման ընթացեալ
զհետ նորա եւ դարձաւ ի կառացն ընդ
22 առաջ նորա եւ ասէ, Ողջո՞յն է։ Եւ
ասէ Գիեզի, Ողջոյն է. տէր իմ առա-

[1] Ըստ Եբրայեցւոյն՝ մեծարոյ [2] Եբր. պակաս
[3] Եբր. ոսկի [4] Եբր. շարժեսցէ

[5] Եբր. բանի առնն Աստուծոյ [6] Եբր. այրն Աստուծոյ [7] Եբր. վայր մի [8] Եբրայեցին յաւելու առնն Աստուծոյ

քեաց զկնի առ քեզ եւ ասէ, Ահա եկին
առ իս երկու պատանեակք ի լեռնէն
Եփրեմի յորդւոց մարգարէից. տուր նո-
ցա տաղանդ մի արծաթոյ, եւ երկուս
23 պատմուճանս հանդերձեալս։ Եւ ասէ
Նէեման, [1]Թէ այդպէս իցէ, առ երկս
տաղանդս արծաթոյ"։ Եւ բռնադատեաց
զնա, եւ ծրարեաց [2]երկս տաղանդս ար-
ծաթոյ յերկուս պարկս, եւ երկուս պատ-
մուճանս հանդերձեալս. եւ ետ ցեր-
կուս ծառայս իւր եւ բարձին առաջի
24 նորա։ [3]Եւ եկին ի մթին", եւ առ ի ձե-
ռաց նոցա եւ եդ ի տան, եւ արձակեաց
25 զարսն եւ գնացին. Եւ ինքն եմուտ եւ
կայր առաջի տեառն իւրոյ. եւ ասէ ցնա
Եղիսէ, Ուստի՞ գաս Գէեզի. եւ ասէ
Գէեզի, Ոչ երթեալ ծառայի քո ոչ
26 յայսկոյս եւ ոչ յայնկոյս։ Եւ ասէ ցնա
Եղիսէ, Ո՞չ սիրտ իմ գնաց յորժամ
դարձաւ այրն ի կառաց անտի ընդ ա-
ռաջ քո. [4]եւ արդ առեր զարծաթն եւ
զհանդերձն՝ ի ձիթենիս եւ յայգիս եւ
յարջառս եւ յոչխարս եւ ի ծառայս եւ
27 յաղախնայս"։ Եւ բորոտութիւնն Նէե-
մանայ յարեսցի ի քեզ եւ ի զաւակ
քո յաւիտեան։ Եւ ել յերեսաց նորա
բորոտեալ իբրեւ զձիւն։

ԳԼ. Զ

1 **Ե**ւ ասեն որդիք մարգարէիցն ցԵղի-
սէ, Ահա ասիկ տեղիս յորում մեք
2 [5]բնակեմք՝ նեղ է մեզ։ Երթիցուք մին-
չեւ ցՅորդանան, եւ առցուք անտի
այր իւրաքանչիւր գերան մի, եւ ա-
րասցուք մեզ անդ բնակութիւն. եւ ասէ,
3 Երթայք։ Եւ ասէ մի ոմն, [6]Եկ եւ դու
մեղմով երթիցես" ընդ ծառայս քո. եւ
4 նա ասէ, Ես եկից։ Եւ գնաց ընդ նո-
սա. եւ չոգան ի Յորդանան, եւ հար-
5 կանէին փայտ։ Եւ ահա մին մինչդեռ
ընկենոյր զհեծանն, անկաւ երկաթն
ի ջուրն. եւ վայեաց եւ ասէ, Ո՜հ, տէր,
6 եւ զայն յանօթ առեալ էր։ Եւ ասէ այրն
Աստուծոյ, Յո՞ր վայր անկաւ. եւ եցոյց
նմա զտեղին. եւ ճեղքեաց փայտ եւ
ընկէց անդր, եւ ի վեր եկաց երկաթն.

[1] Եբր. Կամեաց, առ երկուս տաղանդս [2] Եբր. երկուս [3] Եբր. Իբրեւ եկն ի բարձրաւանդակն [4] Եբր. Իցէ՞ ժամանակ առնուլ արծաթ եւ առնուլ հանդերձս, եւ ձիթենիս եւ այգիս եւ ոչխարս եւ արջառս եւ ծառայս եւ աղախնայս [5] Եբր. բնակեմք առաջի քո [6] Եբր. Կամեաց, եւ եկ

7 Եւ ասէ, Վերացո քեզէն. եւ ձգեաց
զձեռն իւր եւ առ զնա։
8 Եւ արքայն Ասորւոց տայր պատե-
րազմ ընդ Իսրայէլի. խորհեցաւ ընդ
ծառայս իւր եւ ասէ, [7]Ի տեղի մի յԵլ-
9 մոնի" բանակեցայց ի զարանի։ Եւ ա-
ռաքեաց [8]Եղիսէ առ արքայն Իսրայէ-
լի եւ ասէ, Զգոյշ լեր, գուցէ անցանի-
ցես ընդ այն տեղի, զի անդ թաքու-
10 ցեալ նստին Ասորիք։ Եւ առաքեաց ար-
քայն Իսրայէլի ի տեղին զոր ասաց նմա
[8]Եղիսէ, եւ զգուշանայր արար զնա,
եւ զգուշացաւ անտի ոչ մի անգամ եւ
11 ոչ երկիցս։ Եւ զայրացաւ անձն արքային
Ասորւոց վասն բանին այնորիկ, եւ կո-
չեաց զծառայս իւր եւ ասէ ցնոսա, Ո՞չ
պատմէք ինձ, եթէ ո՛ մատնէ զիս ար-
12 քային Իսրայէլի։ Եւ ասէ մի ոմն ի ծա-
ռայից նորա, Ոչ, տէր իմ արքայ. այլ
Եղիսէ մարգարէ յԻսրայէլի պատմէ ար-
քային Իսրայէլի զամենայն զբանս քո զոր
13 խօսեսցիս ի սենեակի քնոյ քո։ Եւ ասէ,
Երթայք տեսէք ուր իցէ նա, եւ առա-
քեցից ըմբռնեցից զնա։ Եւ պատմեցին
նմա եւ ասեն, Ահաւանիկ ի Դովթայիմ է։
14 Եւ առաքեաց անդր կառս եւ երիվարս
եւ զօր ծանր. եւ եկին գիշերի եւ պա-
15 տեցին զքաղաքն։ Եւ կանխեաց յառ-
նել [9]ի պաշտօնէ Եղիսէ, եւ ել գնաց".
եւ ահա զօր պատեալ էր զքաղաքաւն,
եւ երիվարք եւ կառք. եւ ասէ ցնա
պատանեակն, [10]Տէր, զի՞ գործեսցուք։
16 Եւ ասէ Եղիսէ, Մի՛ երկնչիր, զի
ընդ մեզ բազումք են քան ընդ նոսա։
17 Եւ եկաց յաղօթս Եղիսէ եւ ասէ, Տէր,
բաց զաչս պատանեկիս եւ տեսցէ. եւ
եբաց Տէր զաչս նորա, եւ ետես եւ ա-
հա լեառնն լի էր ձիովք եւ հրեղէն կա-
18 ռօք շուրջ զԵղիսէիւ։ Եւ իջին առ նա.
եւ եկաց յաղօթս Եղիսէ առ Տէր եւ
ասէ, Հար զազգդ զայդ շլացութեամբ։
Եւ եհար զնոսա շլացութեամբ ըստ բա-
19 նին Եղիսէի։ Եւ ասէ ցնոսա Եղիսէ,
Ոչ այս ճանապարհ է եւ ոչ այս քաղաք.
եկայք զկնի իմ եւ տարայց զձեզ առ
այրն զոր խնդրէք. եւ տարաւ զնոսա
20 ի Սամարիա։ Եւ եղեւ իբրեւ եմուտ ի
Սամարիա, ասէ Եղիսէ, Բաց, Տէր,
զաչս նոցա եւ տեսցեն. եւ եբաց Տէր

[7] Եբր. Յայս ինչ, յայն ինչ տեղւոջ [8] Եբր. այրն Աստուծոյ [9] Եբր. պաշտօնեայն առնն Աստուծոյ եւ ել [10] Եբր. Ո՛հ, Տէր

զաչս նոցա եւ տեսին, եւ ահա էին ի
մէջ Սամարիայ ։
21 Իբրեւ ետես զնոսա արքայն Իսրայե-
լի, ասէ ցԵղիսէ, Եթէ Հարկանելով
22 հարի՞ց զդոսա, հայր ։ Եւ ասէ, Մի՛ հար-
կանիր, [1]բայց եթէ զայնոսիկ զոր գե-
րեցես սրով քով եւ աղեղամբ քով՝ հար-
կանիցես". դիր հաց եւ ջուր առաջի դո-
ցա, եւ կերիցեն եւ արբցեն եւ երթի-
23 ցեն առ տէր իւրեանց ։ Եւ [2]արկ առա-
ջի նոցա խոտս սակս մեծս" եւ կե-
րան եւ արբին. եւ արձակեաց զնոսա,
եւ գնացին առ տէր իւրեանց. եւ ոչ
եւս յաւելին մենեհակապէնքն Ասորւոց
գալ յերկիրն Իսրայելի ։
24 Եւ եղեւ յետ այնորիկ, ժողովեաց
[3]որդի Ադերայ" արքայ Ասորւոց զամե-
նայն զբանակն իւր, եւ ել նստաւ զՍա-
25 մարիաւ ։ Եւ եղեւ սով մեծ ի Սամա-
րիա, եւ նստէին զնովաւ, մինչեւ ե-
ղեւ խալամ իշոյ [4]յիսուն սկեղ արծա-
թոյ, եւ չորրորդ կապճի աղբոյ աղաւ-
26 նեաց՝ [5]յիսուն եւ" հինգ արծաթոյ ։ Եւ
արքայ Իսրայելի շրջէր ի վերայ պարս-
պին. եւ կին մի աղաղակեաց առ նա
27 եւ ասէ, Ապրեցո զիս, տէր արքայ ։ Եւ
ասէ, [6]Մի՛ ապրեցուսցէ զքեզ Տէր, ուս-
տի՞ ապրեցուցից զքեզ, ի կալո՞յ թէ ի
28 հնձանէ ։ Եւ ասէ ցնա արքայ, Զի՞ է քեզ.
եւ ասէ, Կինս այս ասաց ցիս, Տուր
զորդիդ քո եւ կերիցուք զդա այսօր,
եւ զորդիս զիմ կերիցուք առ վաղիւ ։
29 Եւ եփեցաք զորդին իմ եւ կերաք զնա.
եւ ասեմ ցսա յաւուրն երկրորդի, Տուր
զորդիդ քո եւ կերիցուք զդա. եւ թա-
30 քոյց զորդին իւր ։ Եւ եղեւ իբրեւ լուաւ
արքայ զբանս կնոջն, պատառեաց զհան-
դերձս իւր. եւ ինքն շրջէր ի վերայ
պարսպին. եւ ետես ժողովուրդն զքուրձն
որ ի վերայ մարմնոյ նորա ի ներքոյ ։
31 Եւ ասէ, Օն եւ օն արասցէ ինձ Աս-
տուած, եւ օն եւ օն յաւելցէ, եթէ
կայցէ գլուխն Եղիսէի որդւոյ Սափա-
32 տայ ի վերայ նորա այսօր ։ Եւ Եղիսէ
նստէր ի տան իւրում, եւ ծերքն նստէին
ընդ նմա. եւ առաքեաց այր առաջի ե-
րեսաց իւրոց. եւ մինչչեւ եկեալ էր
հրեշտակին առ նա, ասէ ցծերսն, եթէ
Գիտիցէ՞ք զի առաքեաց որդի սպանողին
առնուլ զգլուխ իմ. [7]իբրեւ մտանիցէ
հրեշտակն," կալջիք զնա ընդ դրօքն. ո՞չ
ապաքէն ձայն ոտից տեառն նորա զկնի
33 նորա իցէ ։ Եւ մինչդեռ խօսէր ընդ նո-
սա, ահա հրեշտակն էջ առ նոսա. եւ
ասէ, Ահա այս չարութիւն ի Տեառնէ
է. զի՞ եւս համբերից Տեառն ։

Գլ. Է

1 Եւ ասէ Եղիսէ, Լուր զբան Տեառն.
այսպէս ասէ Տէր. [5]Քանզի վաղիւ այս
ժամ լիցի՝ գրիւ մի նաշհոյ սկեղ միոյ, եւ
երկու գրիւք գարւոյ՝ սկեղ միոյ ի դրունս
2 Սամարիայ ։ Եւ պատասխանի ետ սպա-
ռապէտն յորոյ արքայ յենոյր ի ձեռն նո-
րա՝ [8]Եղիսէի եւ ասէ, Եթէ սահանս
յերկինս արասցէ Տէր, միթէ լինիցի՞
բանդ այդ. եւ ասէ Եղիսէ, Ահա տեսա-
ցես աչօք քովք, եւ անտի մի՛ կերիցես ։
3 Եւ էին արք չորք բորոտք առ դրան
քաղաքին, եւ ասեն այր ցընկեր իւր,
4 Զի՞ նստիմք աստ եւ մեռանիմք. Եթէ
ասեմք՝ եթէ մտցուք ի քաղաք, սով է
ի քաղաքին, եւ մեռանիմք անդ. եւ եթէ
աստէն նստիցիմք, սակայն մեռանիմք. եւ
արդ եկայք դիմեսցուք ի բանակն Ասոր-
ւոց. եթէ ապրեցուսցեն զմեզ, կեց-
ցուք, եւ եթէ սպանցեն զմեզ, մեռ-
5 ցուք ։ Եւ յարեան ընդ արշալուրջսն մտա-
նել ի բանակն Ասորւոց, եւ եկին [9]ի
մասն ինչ" բանակին Ասորւոց, եւ ահա
6 ոչ զոք անդ մարդ. Զի Տէր հնչեցոյց
ի բանակն Ասորւոց շաչիւն կառաց [10]եւ
բազմաց զօրու մեծի. եւ ասեն այր ցեղ-
բայր իւր, Արդ ի վարձու կալաւ ի վե-
րայ մեր արքայն Իսրայելի զթագաւորս
Քետացւոց, եւ զթագաւորս [11]Եգիպ-
7 տացւոց ։ Եւ յարեան եւ փախեան ընդ
մութն, եւ թողին զվրանս իւրեանց եւ
զձիս իւրեանց եւ զէշս իւրեանց ի բա-
նակին որպէս եւ կային, եւ փախեան
8 մազապուր ։ Եւ մտին բորոտքն մինչեւ
[9]ի մասն մի" բանակին, մտին ի վրան
մի եւ կերան եւ արբին. եւ առին ան-
տի արծաթ եւ ոսկի եւ հանդերձս, եւ
գնացին եւ չոգան թաքուցին. եւ դար-
ձան եւ մտին յայլ վրան, եւ առին ան-

[1] Կամ, միթէ զորս գերիցես սրով քով եւ աղե-ղամբ քով՝ հարկանիցե՞ս [2] Եբր. արար նոցա խնճոյս մեծ [3] Եբր. Բենադադ [4] Եբր. ութ-սուն [5] Եբր. [illegible] [6] Եբր. Եթէ ոչ

[7] Եբր. տեսէք, իբրեւ մտանիցէ հրեշտակն, փակե-ցէք զդուռնն եւ [8] Եբր. առն Աստուծոյ [9] Եբր. ի ծայր [10] Եբր. եւ շաչիւն երիվարաց, [11] Եբր. Եգիպտացւոց գալ ի վերայ մեր

9 տի եւ չոգան եւ Թաքուցին ։ Եւ ասեն
այր ցընկեր իւր, [1]Ոչ այսպէս է՞ զոր
մեք առնեմք. օրս այս օր աւետեաց
է, եւ մեք լռեցե՞մք, եւ մնայցեմք յա-
ռա՞ջ առաւօտու, եւ գտանիցեմք անօ-
րէնութիւն. բայց արդ եկայք մտցուք
եւ պատմեսցուք զայս ի տան Թագա-
10 ւորին ։ Եւ մտին եւ աղաղակեցին առ
դրան քաղաքին, եւ պատմեցին նոցա
եւ ասեն, Մտաք ի բանակն Ասորւոց,
եւ ոչ գոյր անդ այր եւ ոչ ձայն մար-
դոյ, բայց միայն ձիք կապեալք եւ էշք
կապեալք, եւ վրանք նոցա նոյնպէս կային
11 Եւ աղաղակեցին բարապանքն, եւ ազդ
արարին ի տուն Թագաւորին ի ներքս ։
12 Եւ յարեաւ արքայ գիշերայն, եւ ա-
սէ ցծառայս իւր, Պատմեցից ձեզ զոր
ինչ արարին մեզ Ասորիքն. գիտացին
թէ մեք սովիմք, ելին ի բանակէն եւ
թաքեան ի բացի, ասեն, Թերեւս ել-
ցեն ի քաղաքէն, եւ ըմբռնեսցուք զնո-
սա կենդանւոյն, եւ մտցուք ի քաղաքն
13 [2]եւ եղցուք՞ ։ Եւ պատասխանի ետ մի
ոմն ի ծառայից նորա եւ ասէ, Առցեն
հինգ ի ձիոց մնացելոց որք մնացեալ են
աստէն յամենայն բազմութենէ Իսրա-
յելի [3]նուազութիւն, եւ առաքեսցուք
14 անդր եւ տեսցուք ։ Եւ առին երկուս
հեծեալս ձիոց, եւ առաքեաց արքայ
զհետ [4]արքային Ասորւոց եւ ասէ, Եր-
15 թայք եւ տեսէք ։ Եւ գնացին զհետ
նոցա մինչեւ ցՅորդանան. եւ ահա ա-
մենայն ճանապարհն լի էր հանդերձիւ
եւ կահիւ՝ զոր ընկեցին Ասորիքն ի խու-
ճապելն իւրեանց. եւ դարձան հրեշ-
տակքն եւ պատմեցին արքային ։
16 Եւ ել ժողովուրդն եւ յափշտակեաց
զբանակն Ասորւոց. եւ եղեւ գրիւ նաշ-
հոյ՝ սկեղ միոյ, եւ երկու գրիւք գարւոյ
17 սկեղ ըստ բանին Տեառն ։ Եւ արքայ
կացոյց զսպառազէնն, յորոյ յենոյր
արքայ ի ձեռս նորա, [5] եւ կոխեաց զնա
ի խռանն ժողովուրդն առ դրանն, եւ մե-
ռաւ, որպէս խօսեցաւ այրն Աստուծոյ,
որ խօսեցաւ յիջանել [6]հրեշտակին առ
18 նա ։ Եւ եղեւ որպէս խօսեցաւ [7]Եղիսէ
ընդ արքայի եւ ասէ, Թէ Երկու գրիւք

[1]Եբր. Չէ ուղիղ [2]Յեբր. [illegible] [3]Եբր. [ որ մնացին աստէն. ահա են յամենայն բազմութենէ Իսրայէլի] որ սպառեցան [4]Եբր. բանակին [5]Եբր. [illegible], ի վերայ դրանն [6]Եբր. Թագաւորին [7]Եբր. այրն Աստուծոյ

գարւոյ սկեղ միոյ լինիցին, եւ գրիւ
նաշհոյ՝ սկեղ. եւ եղիցի վաղիւ ի սոյն
19 ժամ ի դրունս Սամարիայ. Եւ պատաս-
խանի ետ սպառազէնն [8]Եղիսէի եւ ա-
սէ, Եթէ սահանս յերկնից արասցէ Տէր,
միթէ լինիցի՞ բանդ այդ. եւ ասէ Եղի-
սէ, Ահա տեսցես աչօք քովք եւ ան-
20 տի մի՛ կերիցես ։ Եւ եղեւ նմա այն-
պէս. եւ կոխեաց զնա ժողովուրդն ի
խռանն առ դրանն, եւ մեռաւ ։

## ԳԼ. Ը

1 Եւ խօսեցաւ Եղիսէ ընդ կնոջն զորոյ
կեցոյց զորդին, եւ ասէ, Արի գնա դու
եւ տուն քո եւ լեր պանդուխտ ուր եւ
պանդխտիցիս, զի կոչեաց Տէր [9]սով ի
վերայ երկրիս. քանզի՞ եկն իսկ սով
2 զեւթն ամ ի վերայ երկրին ։ Եւ յարեաւ
կինն եւ արար ըստ բանին [8]Եղիսէի, եւ
գնաց ինքն եւ տուն իւր, եւ պանդխտե-
ցաւ յերկրին այլազգեաց եւթն ամ ։
3 Եւ եղեւ յետ կատարելոյ ամացն եւ-
թանց, դարձաւ կինն յայլազգեացն,
եւ եկն բողոք հարկանել առ արքայ վասն
տան իւրոյ եւ վասն անդոց իւրոց ։
4 Եւ արքայ խօսեցաւ ընդ Գէեզեայ պա-
տանեկին [2]Եղիսէի առնն Աստուծոյ եւ
ասէ, Պատմեա դու ինձ զամենայն մե-
5 ծամեծսն զոր արար Եղիսէ ։ Եւ եղեւ
ի պատմելն նորա արքային թէ որպէս
կենդանացոյց զորդին մեռեալ, եւ ա-
հաւանիկ առաջի անկաւ կինն զորոյ կեն-
դանացոյց զորդին նորա Եղիսէ, աղա-
ղակէր առ արքայ վասն տան իւրոյ եւ
վասն անդոց իւրոց. եւ ասէ Գէեզի.
Տէր արքայ, այս կին է եւ այս որդի
6 զորա զոր կենդանացոյց Եղիսէ ։ Եւ
եհարց արքայ զկինն, եւ պատմեաց նմա,
եւ ետ նմա արքայ ներքինի մի եւ ա-
սէ, Դարձո դմա զամենայն զարդիւնս,
եւ զամենայն զարմտիս անդոյն, յօրէ
յորմէ եթող զերկիրս մինչեւ ցայժմ ։
7 Եւ եկն Եղիսէ ի Դամասկոս. եւ
[10]որդի Ադերայ՞ արքայ Ասորւոց հիւան-
դանայր. եւ պատմեցին նմա եւ ասեն,
8 Եկն այրն Աստուծոյ այսր ։ Եւ ասէ ար-
քայ ցԱզայէլ, Ա՛ռ ի ձեռին քում [11]ման-
նա, եւ ել ընդ առաջ առնն Աստուծոյ,
եւ հարց զՏէր նովաւ եւ ասասցես, Ե-
թէ կեցցե՞մ ի հիւանդութենէ աստի

[8]Եբր. առնն Աստուծոյ [9]Եբր. սով. եւ [10]Եբր. Բենադադ [11]Եբր. ընծայ

9 իմմէ յայսմանէ։ Եւ գնաց Ազայէլ ընդ ա-
ռաջ նորա, եւ առ [1]մաննա ի ձեռին իւ-
րում, եւ՛՛ զամենայն բարութիւնս Դա-
մասկոսի բեռինս ուղտուց քառասնից.
չոգաւ եկաց առաջի նորա եւ ասէ, [2]Հայր
Եղիսէ, որդի քո որդի Ադերայ՛՛ ար-
քայ Ասորւոց առաքեաց զիս առ քեզ
եւ ասէ, եթէ կեցցե՞մ ի հիւանդութե-
10 նէ աստի իմմէ յայսմանէ։ Եւ ասէ ցնա
Եղիսէ, Երթ եւ ասա ցնա, Կելով կեց-
ցես. եւ եցոյց ինձ Տէր զի մահու մե-
11 ռանիցի։ Եւ [3]եկաց առաջի երեսաց նորա
պատկառեալ՛՛ եւ ելաց այրն Աստուծոյ։
12 Եւ ասէ Ազայէլ, Ընդէ՞ր լաս, տէր իմ. եւ
ասէ, Գիտեմ զինչ գործելոց ես ընդ որդիսն
Իսրայելի[4]. զամուրս նոցա հրձիգ արաս-
ցես, եւ զընտիրս նոցա սրով կոտո-
րեսցես, եւ զտղայս նոցա սատակե-
13 ցես, եւ զյղիս նոցա հերձցես։ Եւ ա-
սէ Ազայէլ, Ո՞վ է ծառայ քո շուն մի,
եթէ առնիցէ զբանդ [5]զայդ։ Եւ ասէ Ե-
ղիսէ, Եցոյց ինձ Տէր թագաւորել քեզ
14 ի վերայ Ասորւոց։ Եւ գնաց Ազայէլ յԵ-
ղիսէէ եւ եմուտ առ տէր իւր. եւ ա-
սէ ցնա, Զի՞նչ ասաց Եղիսէ։ Եւ ա-
15 սէ, Ասաց ցիս թէ կելով կեցցէ։ Եւ ե-
ղեւ ի վաղիւ անդր եւ առ [6]մաքման եւ
եթաց ի ջուր եւ արկ զերեսօք [7]իւրովք
եւ մեռաւ. եւ թագաւորեաց Ազայէլ
ընդ նորա։
16 Յամի հինգերորդի Յովրամայ որդւոյ
Աքաաբու արքայի Իսրայելի, թագա-
ւորեաց Յովրամ որդի Յովսափատայ
17 արքայի Յուդայ։ Որդի երեսուն եւ եր-
կուց ամաց էր ի թագաւորել իւրում,
եւ ութ ամ թագաւորեաց յԵրուսաղէմ։
18 Եւ գնաց զճանապարհ թագաւորացն Իս-
րայելի, որպէս արար տունն Աքաաբու.
զի դուստր Աքաաբու էր նորա կնու-
թեան. եւ արար չար առաջի Տեառն։
19 Եւ ոչ կամեցաւ Տէր ապականել զՅու-
դա վասն Դաւթի ծառայի իւրոյ, որ-
պէս եւ ասաց տալ նմա ճրագ եւ որդ-
ւոց նորա զամենայն աւուրս։
20 Եւ յաւուրս նորա նշկահեաց Եդովմ ի
ներքուստ ձեռին Յուդայ, եւ թագա-
21 ւորեցոյց ի վերայ իւր թագաւոր։ Եւ ել

[1]Եբր. ընծայ ի ձեռին իւրում, այսինքն [2]Եբր. Որդի քո Բենադադ. [3]Եբր. յառեալ հայեցաւ ի նա մինչեւ պատկառել նմա [4]Եբրայեցին յաւելու, չարիս [5]Եբր. զայդ մեծ [6]Եբր. մաքպար, որ նշանակէ՝ կապերտ խոշոր [7]Եբր. Նորա

Յովրամ ի Սիոր, եւ ամենայն կառք
ընդ նմա. եւ եղեւ ընդ վաղայարոյցս
յինելոյ գիշերոյն, եւ եհար զԵդովմ [8]զպա-
տեալսն զիւրեաւ՛՛ եւ զիշխանս կառացն.
եւ փախեաւ զօրն յիւրաքանչիւր խո-
22 րանս իւրեանց։ Եւ նշկահեաց Եդովմ
ի ներքուստ ձեռին Յուդայ մինչեւ ցայ-
օր։ Յայնմ ժամանակի նշկահեաց եւ
Լոբնա։
23 Եւ մնացորդք բանից Յովրամայ, եւ
ամենայն ինչ զոր արար, ո՞չ ահանիկ
գրեալ են ի գիրս բանից աւուրց թա-
24 գաւորացն Յուդայ։ Եւ ննջեաց Յովրամ
ընդ հարս իւր, եւ թաղեցաւ ընդ հարս իւր
ի քաղաքի Դաւթի [9]հօր իւրոյ՛՛, եւ թա-
գաւորեաց Ոքոզիա որդի նորա ընդ նորա։
25 Յամի երկոտասաներորդի Յովրամայ
որդւոյ Աքաաբու արքայի Իսրայելի թա-
գաւորեաց Ոքոզիա որդի Յովրամայ ար-
26 քայի Յուդայ։ Քսան եւ երկուց ամաց
էր Ոքոզիա ի թագաւորել իւրում, եւ
տարի մի թագաւորեաց յԵրուսաղէմ.
եւ անուն մօր նորա Գոթողիա դուստր
27 Ամրեայ արքայի Իսրայելի։ Եւ գնաց
զճանապարհ տանն Աքաաբու, եւ արար
չար առաջի Տեառն որպէս եւ տունն
Աքաաբու. քանզի փեսայ էր տանն Ա-
28 քաաբու։ Եւ գնաց ընդ Յովրամայ որդ-
ւոյ Աքաաբու ի պատերազմ ի վերայ Ա-
զայելի արքայի Ասորւոց յՌամովթ Գա-
ղաադ, եւ հարին Ասորիքն զՅովրամ։
29 Եւ դարձաւ արքայ Յովրամ բժշկել ի
Յեզրայէլ ի վիրացն զոր խոցեցին զնա
Ասորիքն յՌամովթ՝ ի պատերազմել նո-
րա ընդ Ազայելի արքայի Ասորւոց։ Եւ
Ոքոզիա որդի Յովրամայ արքայ Յու-
դայ՝ էջ տեսանել զՅովրամ որդի Աքաա-
բու Յեզրայէլ, զի հիւանդանայր նա։

ԳԼ. Թ

1 Եւ Եղիսէ մարգարէ կոչեաց զմի յորդ-
ւոց մարգարէիցն եւ ասէ ցնա, Պնդեա
զմէջ քո, եւ առ զսրուակ իւղոյս ի ձե-
ռին քում, եւ երթ յՌամովթ Գաղաադ։
2 Եւ մտցես անդր, եւ տեսցես անդ զՅէու
զորդի Յովսափատայ որդւոյ Նամեսեայ.
եւ մտցես եւ յարուսցես զնա ի միջոյ
եղբարց իւրոց, եւ տարցես զնա սե-
3 նեակ ի սենեկի. Եւ առցես զսրուակդ
իւղոյ, եւ արկցես ի գլուխ նորա եւ ա-
սասցես, Այսպէս ասէ Տէր. Օծի զքեզ

[8]Այսինքն, որ պաշարեալ էր զնա [9]Յեբր. պակասի

թագաւոր ի վերայ Իսրայելի. եւ բաց-
ցես զդուռն եւ փախիցես, եւ մի՛ մնա-
4 ցես։ Եւ գնաց պատանեակն մարգարէ
յՌամովթ Գաղաադ։
5 Եւ եմուտ անդր. եւ ահա իշխանք
զօրուն նստէին. եւ ասէ, Բան ինչ է
իմ ընդ քեզ, իշխան. եւ ասէ Յէու,
Առ ո՞ յամենեցունց ի մէնջ. եւ ասէ,
6 Առ քեզ, իշխան։ Եւ յարեաւ եմուտ
ի սենեակն, եւ արկ զեւղն ի գլուխ նո-
րա, եւ ասէ ցնա, Այսպէս ասէ Տէր
Աստուած Իսրայելի. Օծի զքեզ ի թա-
գաւոր ժողովրդեան Տեառն ի վերայ Իս-
7 րայելի. Եւ սատակեսցես զտունն Ա-
քաաբու տեառն [1]քո յերեսաց քոց, եւ
առցես" զվրէժ արեան ծառայից իմոց
մարգարէից, եւ զարեանց ամենայն ծա-
ռայից Տեառն ի ձեռաց [2]Յեզաբելայ եւ
8 ի ձեռաց ամենայն տան նորա։ Եւ
սատակեսցես զտունն Աքաաբու" որ
միզիցէ զորմով, եւ զնեղեալն եւ զմնա-
9 ցեալն յԻսրայելէ. Տաց զտունն Աքաա-
բու իբրեւ զտունն Յերոբովամու որդ-
ւոյ Նաբատայ եւ իբրեւ զտունն Բաա-
10 սայ որդւոյ Աքիայ. Եւ զՅեզաբէլ կե-
րիցեն շունք ի վիճակին Յեզրայելի, եւ
ոչ ոք լիցէ որ թաղիցէ։ Եւ եբաց զդուռն
եւ փախեաւ։
11 Եւ Յէու ել առ ծառայս տեառն իւ-
րոյ. եւ ասեն ցնա, Ողջո՞յն է. զի՞ եկն
առ քեզ մոլին այն. եւ ասէ ցնոսա,
Դուք ինքնին գիտէք զայրն եւ զբաջա-
12 ղանս նորա։ Եւ ասեն, [3]Անիրաւութիւն
է այդ". պատմեա մեզ։ Եւ ասէ ցնոսա
Յէու, Այսպէս եւ այսպէս խօսեցաւ
ընդ իս, եւ ասէ, Այսպէս ասէ Տէր.
Օծի զքեզ թագաւոր ի վերայ Իսրայե-
13 լի։ Իբրեւ լուան, փութացան եւ առին
իւրաքանչիւր զբաճկոն իւր, եւ եդին
ի ներքոյ նորա ի վերայ միոյ աստիճա-
նացն ուր նստէին, եւ փող հարին եղ-
ջերեաւն՝ եւ ասեն, Թագաւորեաց Յէու։
14 Եւ զօրաժողով եղեւ Յէու որդի Յով-
սափատայ որդւոյն Նամեսեայ ի վերայ
Յովրամայ. եւ Յովրամ զգուշացեալ էր
յՌամովթ Գաղաադ, ինքն եւ ամենայն
Իսրայէլ, յերեսաց Ազայելի արքայի Ա-
15 սորւոց. Եւ դարձաւ Յովրամ արքայ
բժշկել ի Յեզրայել ի վիրաց անտի զոր
խոցեցին զնա Ասորիքն ի պատերազմել
նորա ընդ Ազայելի արքայի Ասորւոց. եւ
ասէ Յէու, Եթէ իցէ ոգի ձեր ընդ իս, մի՛
ելցէ փախստական ի քաղաքէ աստի
16 երթալ պատմել ի Յեզրայել։ Եւ հեծաւ
Յէու եւ գնաց, [4]եւ էջ" Յեզրայել. զի
Յովրամ [5]արքայ Իսրայելի բժշկէր ի
Յեզրայել ի նետիցն զոր խոցեցին զնա
յՌամովթ ի պատերազմել ընդ Ազայելի
արքայի Ասորւոց. զի նա զօրաւոր էր
եւ այր զօրութեան. եւ ննջեաց" անդ.
եւ Ոքոզիա արքայ Յուդայ էջ տեսանել
17 զՅովրամ։ Եւ դէտն [6]ել յաշտարակն"
Յեզրայելի, եւ ետես [7]փոշի ի գալն
Յէուայ եւ ասէ, [7]Փոշի տեսանեմ ես.
եւ ասէ Յովրամ, Ա՛ռ հեծեալ մի եւ
առաքեա ընդ առաջ նոցա, եւ ասասցէ,
18 Ողջո՞յն է։ Եւ չոգաւ հեծեալն ձիոյ ընդ
առաջ նորա եւ ասէ, Այսպէս ասէ ար-
քայ, Թէ Ողջո՞յն իցէ. եւ ասէ Յէու,
Զի՞ կայ քո եւ ողջունի. դարձիր զկնի
իմ։ Եւ պատմեաց դէտն եւ ասէ, Եհաս
19 ի նոսա հրեշտակն եւ ոչ դարձաւ։ Եւ
արձակեաց երկրորդ հեծեալ մի ձիոյ եւ
ասէ, Այսպէս ասէ արքայ, Թէ Ողջո՞յն
իցէ. եւ ասէ Յէու, Զի՞ կայ քո եւ ող-
20 ջունի. դարձիր զկնի իմ։ Եւ պատմեաց
դէտն եւ ասէ, Եհաս ի նոսա եւ ոչ դար-
ձաւ. եւ վարելն իբրեւ զվարելն Յէուայ
որդւոյ Նամեսեայ, քանզի տագնապաւ
21 [8]եհաս։ Եւ ասէ Յովրամ, Լծեա. եւ
լծեցին կառս. եւ ամբարձաւ Յովրամ
արքայ Իսրայելի, եւ Ոքոզիա արքայ
Յուդայ՝ այր իւրաքանչիւր ի կառս իւր,
եւ ելին ընդ առաջ Յէուայ. եւ գտին զնա
ի վիճակին Նաբովթայ Յեզրայելացւոյ։
22 Եւ եղեւ իբրեւ ետես Յովրամ զՅէու,
եւ ասէ, Ողջո՞յն է, Յէու. եւ ասէ Յէու,
Զի՞նչ ողջոյն է, տակաւին պոռնկու-
թիւն Յեզաբելայ մօր քո եւ կախար-
23 դութիւնք նորա յաճախիցեն։ Եւ դար-
ձոյց Յովրամ զձեռս իւր եւ փախեաւ,
եւ ասէ ցՈքոզիա, Դաւ է, Ոքոզիա։
24 Եւ Յէու ընդ գիրկս եմուտ, եւ եհար
զՅովրամ ընդ մէջ թիկանց նորա, եւ
ել նետն ընդ սիրտ նորա, եւ կծկեցաւ
25 [9]ի վերայ ծնգաց իւրոց"։ Եւ ասէ ցԲա-
դեկար սպառազէնն իւր, Ընկեա զդա ի
վիճակ ագարակին Նաբովթայ Յեզրայե-

[1] Եբր· քո, եւ առից [2] Եբր· Յեզաբելայ։ (8) Եւ կորիցէ ամենայն տունն Աքաաբու, եւ սատակեցից զԱքաաբու [3] Եբր· Սուտ է

[4] Յեբր· գոլոռէ [5] Եբր· ննջեալ դնէր [6] Եբր· կայր ի վերայ աշտարակին [7] Եբր· գունդ. [8] Եբր· վարէր [9] Եբր· ի կառս իւր

լացուց. զի [1]յիշեմ մինչդեռ ես եւ դու
հեծեալ էաք ի զոյգս զկնի Աքաաբու
հօր դորա, եւ Տէր առ ի վերայ դորա
26 զառածս զայս. Եթէ ոչ զարիւն Նա-
բովթայ եւ զարիւն որդւոց նորա զոր
տեսի երէկ, ասէ Տէր, հատուցից [2]նմա
ի վիճակիս յայսմիկ, ասէ Տէր. եւ արդ
առ ընկեա զդա ի վիճակ այդր ըստ
բանին Տեառն։
27 Եւ Ոքոզիա արքայ Յուդայ ետես եւ
փախեաւ ընդ ճանապարհ [3]Բեթանգանայ.
եւ պնդեցաւ զհետ նորա Յէու եւ ասէ.
Հարթ, եւ զդա եւս. եւ եհար զնա ի
կառսն մինչդեռ ելանէր ընդ զառ ի
վերն [4]Գերայի, որ է Յեբղաամ. եւ
փախեաւ ի Մակեդդով, եւ անդ մեռաւ։
28 Եւ հանին զնա ծառայք [5]իւր յԵրուսա-
ղէմ, եւ թաղեցին զնա ի գերեզմանի
իւրում ընդ հարս իւր ի քաղաքի Դաւթի։
29 Եւ յամին մետասաներորդի Յովրամայ
[6]արքային Իսրայելի, թագաւորեաց՝՝
Ոքոզիա ի վերայ Յուդայ։
30 Եւ եկն Յէու Յեզրայէլ. եւ Յեզա-
բէլ լուաւ, եւ ծարրեաց զաչս իւր եւ
զարդարեաց զգլուխ իւր, եւ հայէր ընդ
31 պատուհանն։ Եւ Յէու մտանէր [7]ի
քաղաքն. եւ ասէ, Ողջո՞յն իցէ Զամբրի
32 տիրասպան։ Եւ՝՝ ամբարձ զերեսս իւր
ի պատուհանն եւ ասէ, [8]Ո՞վ ես դու. էջ
առ իս՝՝. եւ հայեցան ի խոնարհ առ նա
33 [9]երկու ներքինիք։ Եւ ասէ, Ընկեցէք
զդա ի խոնարհ. եւ ընկեցին զնա, եւ
ցայտեցաւ յարենէ նորա զորմովքն եւ
զձիովքն, եւ [10]կոխեցին զնա առաթուր։
34 Եւ ինքն եմուտ եկեր եւ արբ, եւ
ասէ, Տեսէք զանիծեալն զայն եւ թա-
ղեցէք զնա, զի դուստր թագաւորի է։
35 Եւ չոգան թաղել զնա, եւ ոչ ինչ գտին
ի նմանէ, բայց զգագաթն եւ զոտսն
36 եւ զթաթս ձեռացն։ Եւ դարձան պատ-
մեցին նմա. եւ ասէ, Բան Տեառն է
զոր խօսեցաւ ի ձեռն Եղիայի Թեզբաց-
ւոյ եւ ասէ, Ի վիճակին Յեզրայելի կե-
37 րիցեն շունք զմարմինս Յեզաբելայ. Եւ
եղիցի դին Յեզաբելայ իբրեւ զաղբ ի
վերայ երեսաց անդոյ ի վիճակին[11]. զի
մի՛ լինիցի ասել նոցա՝ թէ Այս է Յեզաբէլ։

Գլ. Ժ

1 Եւ Աքաաբու էին որդիք եւթանասուն
ի Սամարիա. եւ գրեաց Յէու հրովար-
տակ եւ առաքեաց ի Սամարիա առ
իշխանսն՝ [12]Սամարիայ եւ՝՝ առ ծերս եւ
առ դայեակսն Աքաաբու, եւ ասէ,
2 Իբրեւ հասանիցէ առ ձեզ հրովարտակդ
այդ, ընդ ձեզ են որդիք տեառն ձերոյ,
եւ ընդ ձեզ կառք եւ երիվարք, եւ
ընդ ձեզ քաղաքք ամուրք եւ զէնք.
3 Եւ տեսանիցէք զլաւ եւ զուղիղ յորդ-
ւոց տեառն ձերոյ, եւ հաստատիցէք
զնա ի վերայ աթոռոյ հօր իւրոյ, եւ
տայցէք պատերազմ ի վերայ տան
4 տեառն ձերոյ։ Եւ երկեան յոյժ եւ ասեն,
Ահա երկու թագաւորքն ոչ կացին զդէմ
նորա, եւ մեք զիա՞րդ ունիցիմք զդէմ։
5 Եւ առաքեցին [13]ի տանէն եւ ի քաղա-
քէն՝՝ եւ ծերքն եւ դայեակք առ Յէու
եւ ասեն, Ծառայք քո եմք մեք, եւ
զոր ինչ ասասցես մեզ՝ արասցուք. եւ
ոչ թագաւորեցուսցուք զոք, այլ որ ինչ
բարին է առաջի քո՝ [14]արասցուք։
6 Եւ գրեաց առ նոսա հրովարտակ երկ-
րորդ եւ ասէ, Եթէ իմ էք դուք եւ
ձայնի իմում լսէք, առէք զգլուխս ա-
րանց որդւոց տեառն ձերոյ եւ բերէք
առ իս վաղիւ ի սոյն ժամու ի Յեզրայէլ.
եւ որդիք արքայի էին արք եւթանա-
սուն, եւ [15]ճոխք քաղաքին՝՝ սնուցանէին
7 զնոսա։ Եւ եղեւ իբրեւ եհաս հրովար-
տակն առ նոսա, կալան զորդիսն ար-
քայի եւ սպանին արս եւթանասուն,
եւ եդին զգլուխս նոցա ի կողովս, եւ
8 առաքեցին առ նա Յեզրայէլ։ Եւ եկն
հրեշտակն եւ պատմեաց եւ ասէ, Բե-
րին զգլուխս որդւոցն արքայի։ Եւ ասէ,
Դիք զնոսա երկուս դրահանս [16]արտա-
9 քոյ քաղաքիս՝՝ մինչեւ յառաւօտ։ Եւ
եղեւ ընդ առաւօտն ել եւ եկաց, եւ
ասէ ցամենայն ժողովուրդն, Արդար էք
դուք. ահաւասիկ ես յարեայ ի վերայ
տեառն իմոյ եւ սպանի զնա, [17]տեսէք
10 զսոսա ամիով՝ ո՞ կոտորեաց։ Զի՝՝ մի՛
անկանիցի ի բանէն Տեառն յերկիր, զոր

[1] Եբր. յիշեա [2] Եբր. քեզ [3] Նշանակէ՝ տան պարտիզին [4] Եբր. Գուրայ [5] Եբր. իւր կառօք [6] Եբր. որդւոյ Աքաաբու թագաւորեալ էր [7] Եբր. ընդ դուռն, և Յեզ-բէլ ասէ, Ողջոյն եղե՞ւ Զամբրեայ տիրասպանի։ (32) Եւ Յէու [8] Եբր. Ո՞վ ընդ իս, ո՞վ։ [9] Եբր. երկու երեք [10] Եբր. կոխեաց [11] Եբրայեցին յաւելու, Յեզրայելի

[12] Եբր. Յեզրայելի [13] Եբր. որ ի վերայ տանն եւ որ ի վերայ քաղաքին էին, [14] Եբր. արա [15] Եբր. էին ընդ ճոխս քաղաքին որ [16] Եբր. ի մուտս դրանն [17] Եբր. եւ ո՞ կոտորեաց զամենեսին զնոսա։ (10) Արդ գիտասջիք զի

*խօսեցաւ Տէր ի վերայ տանն Աքաաբու,
եւ Տէր արար զոր ինչ խօսեցաւ ի ձեռն
11 ծառայի իւրոյ Եղիայի։ Եւ եհար Յէու
զամենայն մնացեալս ի տանէ Աքաաբու
ի Յեզրայէլ, եւ զամենայն մեծամեծս
նորա եւ զծանօթս նորա եւ զքուրմս
նորա, առ ի չթողլոյ նմա մնացորդ։
12 Եւ յարեաւ գնաց եւ չոգաւ ի Սամա-
րիա. եւ մինչդեռ ի Բեթակադ հովուաց
13 ի ճանապարհին էր, եգիտ Յէու զեղ-
բարս Ոքոզեայ արքայի Յուդայ, եւ
ասէ, Ո՞յք էք դուք. եւ ասեն, Եղբարք
Ոքոզեայ եմք մեք, եւ իջաք յողջոյն
որդւոց արքայի եւ որդւոց [1]զօրացելոյն։
14 Եւ ասէ, Կալարուք զդոսա կենդանիս.
եւ կալան զնոսա կենդանիս, եւ կոտո-
րեցին զնոսա [2]ի Բեթակադ՝ որս քառասուն
եւ երկուս, եւ ոչ մնաց ի նոցանէ այր։
15 Եւ գնաց անտի, եւ եգիտ զՅովնա-
դաբ որդի Ռեքաբայ ընդ առաջ իւր, եւ
օրհնեաց զնա. եւ ասէ ցնա Յէու, Եթէ
իցէ՞ սիրտ քո ուղիղ իբրեւ զսիրտ իմ
ընդ սրտի քում. եւ ասէ Յովնադաբ, Է։
Եւ ասէ Յէու, Եթէ իցէ՝ տուր ցիս
զձեռն քո. եւ ետ զձեռն իւր, եւ եհան
16 զնա առ իւր ի կառսն. Եւ ասէ ցնա,
Եկ ընդ իս եւ տես զնախանձ իմ վասն
Տեառն. եւ նստոյց զնա ի կառս իւր։
17 Եւ եմուտ ի Սամարիա, եւ եհար զա-
մենայն մնացորդս Աքաաբու ի Սամա-
րիա. մինչեւ սատակել նմա զնոսա բան
բանին Տեառն զոր խօսեցաւ ընդ Եղիայի։
18 Եւ ժողովեաց Յէու զամենայն ժողո-
վուրդն եւ ասէ ցնոսա, Աքաաբ ծա-
ռայեաց Բահաղու սակաւ ինչ, Յէու
19 ծառայեսցէ նմա բազում։ Եւ արդ զա-
մենայն մարգարէս Բահաղու, զամե-
նայն ծառայս նորա եւ զքուրմս նորա
կոչեցէք առ իս, եւ այր ոք մի՛ վրի-
պեսցէ. զի զոհ մեծ է Բահաղու.
եւ որ վրիպեսցէ, մի՛ ապրեսցի. եւ
Յէու արար խորամնօք, զի կորուսցէ
20 զծառայս Բահաղու։ Եւ ասէ Յէու,
Սրբեցէք նուէրս Բահաղու. եւ քարոզ
21 կարդացին։ Եւ առաքեաց Յէու ընդ
ամենայն Իսրայէլ, եւ եկին ամենայն
ծառայք Բահաղու, եւ ոչ մնաց որ ոչ
եկն. եւ մտին ի տունն Բահաղու, եւ
22 լցաւ տունն Բահաղու ծայր ի ծայր։ Եւ
ասէ Յէու [3]ցմախաթագն, Հանէք զպատ-*

[1] Եբր. տիկնոջն [2] Եբր. առ ջրհորոյն Բեթակադայ [3] Եբր. ցհանդերձապետն

*մուճանս ամենայն ծառայից Բահաղու.
23 եւ հանին նոցա զպատմուճանսն։ Եւ
եմուտ Յէու եւ Յովնադաբ որդի Ռեքա-
բայ ի տունն Բահաղու. եւ ասէ ցծա-
ռայսն Բահաղու, Որոնեցէք եւ տեսէք՝
թէ իցէ՞ ոք աստ ընդ ձեզ ի ծառայից
Տեառն, բայց դուք միայն ծառայք Բա-
24 հաղու։ Եւ [4]եմուտ առնել խունկս եւ
ողջակէզս Յէու”. եւ Յէու կացոյց իւր
արտաքոյ [5]երեքհարիւր եւ” ութսուն այր,
եւ ասէ, Այր որ ապրեսցուսցէ յարանցն
զոր ես հանեմ ի ձեռս ձեր, անձն նորա
25 փոխանակ անձին նորա։ Եւ եղեւ իբրեւ
կատարեաց առնել զողջակէզսն, եւ ասէ
Յէու ցսուրհանդակսն եւ ցապաստաղէնս,
Մտէք հարէք զնոսա, եւ այր մի՛ ելցէ
ի նոցանէն. եւ հարին զնոսա սրով սու-
սերի, եւ ընկեցին սուրհանդակքն եւ
ապաստաղէնք. եւ գնացին մինչեւ ցքա-
26 ղաք տանն Բահաղու. Եւ հանին զարձան
27 տանն Բահաղու, եւ այրեցին զնա։ Եւ կոր-
ծանեցին զարձանսն Բահաղու, եւ քակե-
ցին զտունն Բահաղու, եւ կարգեցին զնա ի
28 լուալիս մինչեւ ցայսօր։ Եւ սատակեաց
29 Յէու զԲահաղ յԻսրայէլէ։ Բայց ի մեղացն
Յերոբովամու որդւոյ Նաբատայ որ յան-
ցոյց զԻսրայէլ՝ ոչ մեկնեցաւ Յէու,
յերինջոյն ոսկեաց որ ի Բեթէլ եւ ի Դան։
30 Եւ ասէ Տէր ցՅէու, Փոխանակ զի
քաջացար առնել ուղղութիւն առաջի
իմ, ըստ ամենայնի՝ որ ինչ ի սրտի ի-
մում՝ արարեր տանն Աքաաբու, որդիք
չորրորդք նստցին քեզ յաթոռն Իսրայէլի։
31 Եւ Յէու ոչ զգուշացաւ գնալ յօրէնս
Տեառն Աստուծոյ Իսրայէլի յամենայն
սրտէ իւրմէ, եւ ոչ մեկնեցաւ ի մեղացն
Յերոբովամայ որ յանցոյց զԻսրայէլ։
32 Յաւուրսն յայնոսիկ սկսաւ Տէր կոտո-
րել յամենայն սահմանս Իսրայէլի, եւ
եհար զնոսա Ազայէլ յամենայն սահմանս
33 Իսրայէլի, ի Յորդանանէ եւ ընդ արեւ-
ելս, զամենայն երկիրն զԳաղաադ,
զԳադայ եւ զՌուբենի եւ զՄանասէի,
յԱրայերայ, որ է յեզր հեղեղատին Առ-
նոնայ, եւ զԳաղաադ եւ զԲասան։
34 Եւ մնացորդք բանից Յէուայ եւ ամե-
նայն ինչ զոր արար, եւ ամենայն զօ-
րութիւն նորա [5]եւ ամենայն խումբքն
զոր խմբեաց”, ո՞չ ահաւասիկ գրեալ են ի
գիրս բանից աւուրց թագաւորացն Իս-
35 րայէլի։ Եւ ննջեաց Յէու ընդ հարս իւր,*

[4] Եբր. մտին առնել զոհս եւ ողջակէզս [5] Յեբր. պակաս

եւ թաղեցին զնա ի Սամարիա. եւ թա-
գաւորեաց Յովաքազ որդի նորա ընդ
36 նորա։ Եւ աւուրք զորս թագաւորեաց
Յէու ի վերայ Իսրայէլի ամք քսան եւ
ութ ի Սամարիա։

## ԳԼ. ԺԱ

1 Եւ Գոթողիա մայր Ոքոզեայ, տեսեալ եթէ
[1]մեռան որդիք նորա, կորոյս՚՚ զամենայն
2 զաւակ թագաւորութեանն։ Եւ առ Յով-
սաբէէ դուստր արքայի Յովրամայ քոյր
Ոքոզեայ, զՅովաս զորդի Ոքոզեայ, եւ
գողացաւ զնա ի միջոյ որդւոց արքայի
սպանելոյն, զնա եւ զդայեակ նորա ի
սենեկի անկողնոց, եւ թաքոյց զնա յե-
3 րեսաց Գոթողեայ, եւ ոչ մեռաւ։ Եւ էր
ընդ նմա ի տան Տեառն թաքուցեալ ամս
վեց. եւ Գոթողիա թագաւորեալ էր ի
վերայ երկրին։
4 Եւ յամին եւթներորդի առաքեաց
Յովիդայէ եւ առ զհարիւրապետսն եւ
[2]զքսոսն եւ զռասիմ՚՚, եւ ած զնոսա ի
տուն Տեառն, եւ ուխտեաց նոցա [3]զուխտ
Տեառն. եւ եցոյց նոցա [4]Յովիդայէ զոր-
5 դին արքայի։ Եւ պատուէր ետ նոցա
եւ ասէ, Այս բան է զոր առնիցէք.
երրորդ մասն ի ձէնջ մտցէ շաբաթա-
մուտ, եւ պահեսջիք զպահպանութիւն
6 տանն արքունի [4]ի դրանն. Եւ երրորդ
մասն ի դրան [5]ճանապարհացն, եւ եր-
րորդ մասն ի դրան զկնի օժանդակացն,
եւ պահեսջիք զպահպանութիւն տանն[6]։
7 Եւ երկու ձեռք ի ձեզ, ամենայն որ ե-
լանիցէ ընդ շաբաթամուտսն [4]զզուշանալ
տանն Տեառն՚՚, զգուշասցի պահպանու-
8 թեան տանն Տեառն առ արքայ։ Եւ
պատեսջիք զարքայիւ այր եւ գործի իւր
ի ձեռին իւրում. եւ որ մտանիցէ ի [7]սա-
դերովթն՝ մեռցի. եւ [8]լիքն էր՚՚ ընդ
արքայի ի մտանել նորա եւ յելանել նորա։
9 Եւ արարին հարիւրապետքն զամենայն
զոր պատուիրեաց Յովիդայէ [9]իմաստուն.
եւ առնոյր այր զարս իւր, [4]եւ զմտօղսն
ի շաբաթամուտսն հանդերձ ելօղօքն ի
շաբաթամտէն, եւ մտանէր առ Յովի-
10 դայէ քահանայ։ Եւ ետ քահանայն հա-
րիւրապետացն [10]զեղարդունս եւ զքովան-
գակ զէնն՚՚ արքայի Դաւթի որ կայր ի
11 տանն Տեառն։ Եւ յարեան օժանդակքն,
այր եւ գործի իւր ի ձեռին իւրում, յա-
ջոյ ուսոյ տանն մինչեւ ցձախոյ ուս
տանն եւ սեղանոյն եւ տանն արքունի
12 շուրջանակի։ Եւ [11]առաքեաց զարքայոր-
դին, եւ եդ ի վերայ նորա [12]զյեզերն եւ
զվկայութիւնն. եւ թագաւորեցոյց զնա
եւ օծ զնա, եւ [13]ծափս եհար եւ ասէ՚՚,
Կեցցէ արքայ։
13 Եւ լուաւ Գոթողիա զձայն ընթանա-
լոյ ժողովրդեանն, եւ եմուտ առ ժողո-
14 վուրդն ի տունն Տեառն. Եւ ետես՝ եւ
ահա [14]կայր ի վերայ սեանն ըստ օրինի
[4]իւրում, եւ [15]երգիչք եւ փողարք շուրջ
զարքայիւ, եւ ամենայն ժողովուրդք
երկրին խնդային եւ փողս հարկանէին
փողովք, եւ պատառեաց Գոթողիա
զհանդերձս իւր, աղաղակեաց եւ ասէ,
15 Դաւ է, դաւ է։ Եւ պատուէր ետ Յո-
վիդայէ քահանայ հարիւրապետացն ստ-
ախկանաց զօրուն եւ ասէ ցնոսա, Հա-
նէք զդա ի ներքուստ [7]սադերովթայդ,
եւ որ մտանիցէ զկնի դորա՝ մեռցի սրով.
քանզի ասաց քահանայն թէ մի՛ մեռցի
16 ի տան Տեառն։ Եւ արկին ձեռն ի նա,
[16]մտին ընդ ճանապարհ մտից երիվարաց
տանն արքայի, եւ մեռաւ անդ։
17 Եւ ուխտեաց Յովիդայէ ուխտ ի մէջ
Տեառն եւ ի մէջ արքայի եւ ի մէջ ժողո-
վրդեանն, լինել ի ժողովուրդ Տեառն. եւ
18 ի մէջ արքայի եւ ի մէջ ժողովրդեանն։ Եւ
եմուտ ամենայն ժողովուրդ երկրին ի տունն
Բահաղու, եւ կործանեցին զնա եւ զսե-
ղանս նորա, եւ զպատկերս նորա խոր-
տակեցին մանր. եւ զՄաթան զքուրմն
Բահաղու սպանին յանդիման սեղանոյն.
եւ եդ քահանայն ստեփանս ի տան
19 Տեառն։ Եւ առ զհարիւրապետսն եւ
[2]զքսոսն եւ զռասիմ՚՚ եւ զամենայն
ժողովուրդ երկրին, եւ իջուցին զար-
քայ ի տանէ Տեառն. եւ [17]եմուտ ընդ
ճանապարհն սուրհանդակաց դրան [18]տանն
արքունի, եւ [19]նստոյց զնա՚՚ յաթոռ
20 թագաւորացն։ Եւ ուրախ եղեւ ամե-
նայն ժողովուրդ երկրին, եւ քաղաքն
դադարեաց. եւ զԳոթողիա սպանին սրով

---

[1] Ոմանք. մեռաւ որդի իւր եւ յարեաւ եւ կորոյս
[2] Ոմանք. զԹիկնապահսն եւ զսուրհանդակս [3] Ոմանք. ուխտ և ետ նոցա երդնուլ ի տան [4] Յոմանս պակասէ
[5] Ոմանք. Սուրայ [6] Ոմանք. այսպէս յաւելու, ի մտանելոյ
[7] Նշանակի՝ կարգ [8] Ոմանք. եղերուք [9] Ոմանք. քահանայ [10] Ոմանք. զգեղարդունս եւ զվահանս

[11] Ոմանք. եհան [12] Ոմանք. զնեզերն, որ նշանակէ թագ
[13] Ոմանք. ծափս հարին եւ ասեն [14] Ոմանք. կայր արքայ [15] Ոմանք. իշխանք [16] Ոմանք. և եմուտ [17] Ոմանք. մտին [18] Ոմանք. ի տունն [19] Ոմանք. նստաւ

21 ի տան արքային։ Որդի եւթն ամաց Յո-
վաս ի թագաւորել իւրում։

Գլ. ԺԲ

1 Յամին եւթներորդի Յէուայ թագաւորե-
աց Յովաս, եւ քառասուն ամ թա-
գաւորեաց յԵրուսաղէմ. եւ անուն մօր
2 նորա Սաբիա ի Բերսաբէէ։ Եւ արար
Յովաս ուղղութիւն առաջի Տեառն զա-
մենայն աւուրս զորս լուսաւորեաց զնա
3 Յովիդայէ քահանայ. Բայց ի բարձանցն
ոչ մերժեցան, եւ անդ սակաւին զոհէր
ժողովուրդն, եւ արկանէր խունկս ի
բարձունսն։
4 Եւ ասէ Յովաս ցքահանայսն, Զամե-
նայն արծաթ սրբութեանցն մտեալ ի
տուն Տեառն, արծաթ՝ իւրաքանչիւր
առն [1]անցելոյ ի համարի ոգւոց, զամե-
նայն արծաթ որ անկանիցի ի սիրտ մար-
5 դոյ բերել ի տուն Տեառն, Առցեն յիւ-
եանս քահանայքն, այր իւրաքանչիւր [2]ի
վաճառէ իւրեանց. եւ նոքա կազմես-
ցեն [3]զխեղեկ տանն Տեառն՝ յամենայն
ինչս ուր գտանիցի անդ [3]խեղեկ։
6 Եւ եղեւ ի քսաներորդի եւ յերրորդի
ամի Յովասու արքային՝ ոչ կազմեցին
7 քահանայքն [3]զխեղեկ տանն Տեառն։ Եւ
կոչեաց արքայ Յովաս զՅովիդայէ քա-
հանայ եւ զքահանայսն եւ ասէ ցնոսա,
Ընդէ՞ր ոչ կազմեցէք [3]զխեղեկ տանն
Տեառն. եւ արդ մի՛ եւս առնուցուք
արծաթ [2]յամենայն վաճառացն՛՛ ձերոց,
այլ ի [3]խեղեկ տանն Տեառն տացիք զայն։
8 Եւ ուխտեցին քահանայքն չառնուլ ար-
ծաթ ի ժողովրդենէն, եւ ոչ կազմել
9 [3]զխեղեկ տանն։ Եւ առ Յովիդայէ քա-
հանայ սնտուկ մի, եւ ծակեաց ծակ
ի բերան նորա, եւ եդ զնա ի կողմանէ
սեղանոյն [4]Տեառն. եւ տային՛՛ քահա-
նայքն որ պահէին զդուռնն՝ զամենայն
10 արծաթ [5]գտեալ ի տանն՛՛ Տեառն։ Եւ
եղեւ իբրեւ տեսին եթէ [6]բազում է ի
սնտուկն անդ, [7]ել դպրապետն ար-
քունի եւ քահանայն մեծ, [8]եւ կապեցին՛՛
11 զարծաթն գտեալ ի տան Տեառն. Եւ
[9]տային զարծաթն պատրաստեալն ի
ձեռս գործելեաց զգործս կահի տանն
Տեառն. եւ տային ցհիւսունս փայտից
12 եւ ցշինօղս գործել ի տան Տեառն, Եւ
[10]ցնկարիչս եւ ցճարտարս՛՛ եւ ցքարա-
կոփս քարանց գնել փայտ եւ քարս
տաշեալս, կազմել [3]զխեղեկ տանն Տեառն,
յամենայն ինչ յոր ելանիցէ ի տունն
13 կազմել։ Բայց [11]զի մի՛ լինիցին՛՛ տանն
Տեառն [12]գրունք արծաթիք, [13]բեւեռք
եւ տաշտք եւ փողք, ամենայն անօթ
ոսկի եւ անօթ արծաթի՝ յարծաթոյ
14 մտելոյ ի տուն Տեառն, Այլ [14]զի գոր-
ծօնեայ գործոյն [15]տային զայն. եւ [16]կազ-
15 մեցեն զտունն Տեառն։ Եւ ոչ [17]առնէին
համար արանցն՛՛ յորոց ձեռս տային զար-
ծաթն, տալ գործաւորաց գործոյն, զի
16 յաւատ գործէին։ Եւ արծաթ վասն մե-
ղաց եւ վասն յանցանաց ոչ մտանէր ի
տուն Տեառն, այլ քահանայիցն լինէր։
17 Յայնժամ ել Ազայէլ արքայ Ասորւոց,
եւ ետ պատերազմ ընդ Գեթայ եւ առ
զնա. եւ եդ Ազայէլ զերեսս իւր ելա-
18 նել ի վերայ Երուսաղեմի։ Եւ առ Յո-
վաս արքայ Յուդայ զամենայն զսրբու-
թիւնս զոր սրբեաց Յովսափատ եւ
Յովրամ եւ Ոքոզիա հարք նորա թա-
գաւորք Յուդայ, եւ զիւր սրբութիւնս
եւ զամենայն արծաթ գտեալ ի գանձս
տանն Տեառն եւ ի տան թագաւորին,
եւ առաքեաց Ազայելի արքային Ասոր-
ւոց, եւ գնաց յԵրուսաղեմէ։
19 Եւ մնացորդք բանից Յովասու եւ ա-
մենայն ինչ զոր արար, ո՞չ ահաւասիկ գրեալ
են ի գիրս բանից աւուրց թագաւորացն
20 Յուդայ։ Եւ յարեան ծառայք նորա եւ
եդին նմա դաւաճանութիւն, եւ հարին
զՅովաս ի տան Մաաղոնայ [18]իջանել ի
21 Գաղաադ՛՛։ Եւ Յովազաքար որդի Յե-
մաուաթայ եւ Յեզերութ որդի [19]Նորա,
սպանողք՛՛ ծառայք նորա, հարին զնա
եւ [20]սպանին. եւ թաղեցին զնա ընդ
հարս իւր ի քաղաքի Դաւթի. եւ թա-
գաւորեաց Ամասիա որդի նորա ընդ նորա։

Գլ. ԺԳ

1 Ի քսաներորդի եւ երրորդի ամի Յովա-
սու որդւոյ Ոքոզեայ արքային Յուդայ,
թագաւորեաց Յովաքազ որդի Յէուայ ի

[1] Եբր. անցելոյ, արծաթ [2] Եբր. ի ծանօթից
[3] Նշանակէ՝ խորամատ [4] Եբր. յաջմէ մտանելոյ ա-
րանց ի տունն Տեառն. և տուն անդր [5] Եբր.
մտեալ ի տունն [6] Եբր. արծաթ բազում [7] Եբր.
ելանէր [8] Եբր. պնդէին եւ համարէին [9] Եբր.
տային

[10] Եբր. ցորմնադիրս [11] Եբր. ոչ արարին [12] Եբր.
բաժակք [13] Եբր. բողմակալք [14] Եբր.
[illegible] [15] Եբր. տային [16] Եբր. կազմէին [17] Եբր.
առնուին համար յարանցն [18] Եբր. ի զառի-
վայրին Սիղղայ [19] Եբր. Սովմերայ, [20] Եբր.
մեռաւ

վերայ Իսրայէլի ի Սամարիա ամս եւթն
2 եւ տասն ։ Եւ արար չար առաջի Տեառն,
եւ գնաց զհետ մեղացն Յերոբովամայ
որդւոյ Նաբատայ որ յանցոյցն զԻսրայէլ,
3 եւ ոչ մեկնեցաւ ի նոցանէն ։ Եւ բար-
կացաւ սրտմտութեամբ Տէր Իսրայէլի,
եւ ետ զնոսա ի ձեռս Ազայելի արքայի
Ասորւոց, եւ ի ձեռս [1]որդւոյ Ադերայ"
որդւոյ Ազայելի զամենայն աւուրս ։
4 Եւ աղաչեաց Յովաքազ զերեսս Տեառն,
եւ լուաւ նմա Տէր . զի ետես զնեղու-
թիւն Իսրայէլի զոր նեղեաց զնա ար-
5 քայն Ասորւոց ։ Եւ ետ Տէր փրկիչ Իս-
րայէլի, եւ ելին ի ձեռանէ Ասորւոց, եւ
նստան որդիքն Իսրայէլի ի բնակութիւնս
իւրեանց որպէս յերէկն եւ յեռանդն ։
6 Սակայն ոչ մեկնեցան ի մեղացն Յերո-
բովամայ որդւոյ Նաբատայ որ յանցոյցն
զԻսրայէլ, այլ ի նոսա գնացին . նա եւ
7 անտառն կայր ի Սամարիա ։ Եւ ոչ մնայ
Յովաքազայ զօր, այլ հեծեալք յիսուն
եւ կառք տասն, եւ տասն հազար հետե-
ւակաց . զի կորոյս զնոսա արքայն Ասորւոց
եւ եդ զնոսա իբրեւ զհող ի կոխումն ։
8 Եւ մնացորդք բանից Յովաքազու եւ
ամենայն ինչ զոր արար եւ զօրութիւնք
նորա, ո՞չ աւասիկ գրեալ են ի գիրս
բանից աւուրց թագաւորացն Իսրայէլի ։
9 Եւ ննջեաց Յովաքազ ընդ հարս իւր, եւ
թաղեցին զնա [2]ընդ հարս նորա" ի Սա-
մարիա . եւ թագաւորեաց Յովաս որդի
նորա ընդ նորա ։
10 Յամի երեսներորդի եւ եւթներորդի
Յովասու արքայի Յուդայ թագաւորե-
եաց Յովաս որդի Յովաքազու ի վերայ
Իսրայէլի ի Սամարիա ամս [3]երկոտասան ։
11 Եւ արար չար առաջի Տեառն, եւ ոչ
մեկնեցաւ յամենայն մեղացն Յերոբո-
վամու որդւոյ Նաբատայ որ յանցոյցն
զԻսրայէլ, այլ ի նոսա գնաց ։
12 Եւ մնացորդք բանից Յովասու եւ ա-
մենայն ինչ զոր արար եւ զօրութիւնք
նորա [4]զոր արար ընդ արքային" Յուդայ,
ո՞չ աւասիկ գրեալ են ի գիրս բանից
13 աւուրց թագաւորացն Իսրայէլի ։ Եւ
ննջեաց Յովաս ընդ հարս իւր, եւ Յե-
րոբովամ նստաւ յաթոռ նորա . եւ թա-
ղեցաւ Յովաս ի Սամարիա ընդ թա-
գաւորս Իսրայէլի ։

14 Եւ Եղիսէ հիւանդացաւ հիւանդու-
թիւն, որով եւ մեռաւ իսկ . եւ էջ առ
նա Յովաս արքայ Իսրայէլի, եւ լալեաց
ի վերայ երեսաց նորա եւ ասէ, Հայր,
հայր, կառք Իսրայէլի եւ հեծեալք նո-
15 րա ։ Եւ ասէ ցնա Եղիսէ, Ա՛ռ դու [5]զա-
ղեղն քո եւ զնետս քո". եւ առ զաղեղն
16 եւ զնետս ։ Եւ ասէ ցարքայն Իսրայէլի,
Մուտ ընդ աղեղնդ ձեռօք քովք . եւ ե-
մուտ ընդ աղեղնն ձեռօք իւրովք . եւ
եդ Եղիսէ զձեռն իւր ի վերայ ձեռաց
17 արքային, Եւ ասէ, Բաց զպատուհանդ
որ է ընդ արեւելս . եւ եբաց . եւ ասէ
Եղիսէ, Ձգեա . եւ ձգեաց . եւ ասէ,
Նետ փրկութեան Տեառն, եւ նետ փրկու-
թեան ընդդէմ Ասորւոց . եւ հարցես զԱ-
18 սորիս յԱփեկ մինչեւ ի սպառ ։ Եւ ասէ
ցնա Եղիսէ, Ա՛ռ դու քեզ նետս . եւ
առ ։ Եւ ասէ ցարքայն Իսրայէլի, Ձգեա
եւ հար զգետնիդ . եւ եհար արքայն ե-
19 րիցս եւ եկաց ։ Եւ [6]տրտմեցաւ ի վերայ
նորա այրն Աստուծոյ, եւ ասէ, Եթէ
հարեալ էիր հնգիցս կամ վեցիցս, յայն-
ժամ հարկանէիր զԱսորիս մինչեւ ի
սպառ . եւ արդ երիցս հարցես զԱսորիս ։
20 Եւ մեռաւ Եղիսէ եւ թաղեցին զնա .
եւ մեկնակազէնքն Մովաբու եկին յեր-
21 կիրն ի գալ տարւոյն ։ Եւ եղեւ ի թա-
ղել նոցա զայր մի, եւ ահա տեսին զմեկ-
նակազէնսն եւ ընկեցին զայրն ի գերեզ-
մանին Եղիսէի . եւ գնաց եւ մերձեցաւ
յոսկերսն Եղիսէի եւ կենդանացաւ, եւ
կանգնեցաւ ի վերայ ոտից իւրոց ։
22 Եւ Ազայէլ արքայ Ասորւոց նեղեաց
զԻսրայէլ զամենայն աւուրս Յովաքա-
23 զու ։ Եւ ողորմեցաւ նոցա Տէր եւ գթա-
ցաւ ի նոսա եւ հայեցաւ ի նոսա վասն
ուխտին իւրոյ որ ընդ Աբրահամու եւ ընդ
Իսահակայ եւ ընդ Յակոբայ . եւ ոչ
կամեցաւ Տէր սատականել զնոսա, եւ
ոչ ընկէց զնոսա յերեսաց [7]իւրոց ։
24 Եւ մեռաւ Ազայէլ արքայ Ասորւոց,
եւ թագաւորեաց [8]որդի Ադերայ" որդի
25 նորա ընդ նորա ։ Եւ դարձաւ Յովաս որդի
Յովաքազու, եւ առ զքաղաքսն ի ձեռաց
[1]որդւոյ Ադերայ" որդւոյ Ազայելի, զորս
առ ի ձեռաց Յովաքազու հօր նորա ի
պատերազմին . երիցս եհար զնա Յովաս,
եւ դարձոյց զքաղաքսն Իսրայէլի ։

[1] Եբր. Բենադադայ [2] [illegible] [3] Եբր. վեշտասան [4] Եբր. որով մարտեաւ ընդ Ամասեայ արքայի

[5] Եբր. աղեղն եւ նետս [6] Եբր. բարկացաւ [7] Եբր. իւրոց մինչեւ ցայժմ [8] Եբր. Բենադադ

## ԳԼ. ԺԴ

1 Յամին երկրորդի Յովասայ որդւոյ Յո-
վաքազու արքայի Իսրայելի, թագաւո-
րեաց Ամասիա որդի Յովասու թագաւոր
2 Յուդայ։ Որդի քսան եւ հինգ ամաց
էր ի թագաւորել իւրում, եւ քսան
եւ ինն ամ թագաւորեաց յԵրուսաղէմ,
եւ անուն մօր նորա Յովադին յԵրու-
3 սաղեմէ։ Եւ արար ուղղութիւն առաջի
Տեառն, բայց ոչ իբրեւ զԴաւիթ զհայր
իւր. ըստ ամենայնի զոր ինչ արար Յո-
4 վաս հայր իւր՝ արար։ Բայց զբարձունսն
ոչ եբարձ, եւ տակաւին ժողովուրդն
զոհէր եւ արկանէր խունկս ի բարձունսն։
5 Եւ եղեւ իբրեւ հաստատեցաւ թագա-
ւորութիւնն ի ձեռին նորա, եւ եհար
զծառայսն իւր որ հարին զարքայ զհայր
6 նորա։ Եւ զորդիս սպանողացն ոչ սպան,
որպէս գրեալ է ի գիրս օրինացն Մովսի-
սի, զոր օրինակ պատուիրեաց Տէր եւ
ասէ, Մի՛ մեռցին հարք վասն որդւոց,
եւ մի՛ որդիք մեռցին վասն հարց, այլ
իւրաքանչիւր ոք ի մեղս իւրում մեռ-
7 ցի։ Նա եհար զԵդովմ [1]ի Մայիլս տասն
հազար, եւ առ զՎէմն պատերազմաւ.
եւ կոչեաց զանուն նորա Յեկթովէլ մին-
չեւ ցայսօր։
8 Յայնմ ժամանակի առաքեաց Ամասիա
հրեշտակս առ Յովաս որդի Յովաքազու
որդւոյ Յէուայ արքայի Իսրայելի՝ եւ ա-
սէ, Եկ յանդիման լիցուք միմեանց ե-
9 րեսօք։ Եւ առաքեաց Յովաս արքայ Իս-
րայելի առ Ամասիա արքայ Յուդայ եւ
ասէ, Ակքան ի Լիբանանէ յղեաց առ ե-
ղեւնափայտն որ ի Լիբանան՝ եւ ասէ,
Տուր զդուստր քո որդւոյ իմում կնու-
թեան. եւ անցին գազանք անապատի
որ ի Լիբանան եւ կոխեցին զակքանն։
10 Հարկանելով հարեր զԵդովմ, եւ հպար-
տացոյց զքեզ սիրտ քո. մեծարեաց եւ
նիստ ի տան քում. ընդէ՞ր գրգռէ զքեզ
չարութիւն քո, եւ անկանիցիս դու եւ
11 Յուդա ընդ քեզ։ Եւ ոչ անսաց Ամա-
սիա. եւ ել Յովաս արքայ Իսրայե-
լի, եւ երեւեցան երեսօք, ինքն եւ Ա-
մասիա արքայ Յուդայ, ի Բեթսամիւս
12 Հրէաստանի։ Եւ պարտեցաւ Յուդա յե-
րեսաց Իսրայելի եւ փախեաւ այր իւ-
13 րաքանչիւր ի բնակութիւն իւր։ Եւ զԱ-
մասիա զարքայ Յուդայ, զորդի Յովա-

[1]Եբր. ի ձորն Աղտից

սու որդւոյ Ոքոզեայ, կալաւ Յովաս [2]որ-
դի Յովաքազու" արքայ Իսրայելի ի Բեթ-
սամիւս. եւ եկն յԵրուսաղէմ եւ եհատ
զպարիսպն Երուսաղեմի ի դրանէ Եփ-
րեմի մինչեւ ցդուռն Անկեանցն, չորեք-
14 հարիւր կանգուն։ Եւ առ [3]զոսկի եւ
զարծաթ եւ զամենայն անօթս գտեալ ի
տանն Տեառն եւ ի գանձս տան թագա-
ւորին, եւ [4]զորդիս խառնակութեանցն",
եւ դարձաւ ի Սամարիա։
15 Եւ մնացորդք բանից Յովասու եւ որ
ինչ արար զօրութեամբ իւրով եւ պա-
տերազմն զոր պատերազմեցաւ ընդ Ա-
մասեայ արքայի Յուդայ, ո՞չ ահաւասիկ
գրեալ են ի գիրս բանից աւուրց թա-
16 գաւորացն Իսրայելի։ Եւ ննջեաց Յո-
վաս ընդ հարս իւր, եւ թաղեցաւ ի
Սամարիա ընդ թագաւորս Իսրայելի. եւ
թագաւորեաց Յերոբովամ որդի նորա
ընդ նորա։
17 Եւ եկեաց Ամասիա որդի Յովասու
արքայ Յուդայ յետ մահուանն Յովասու
որդւոյ Յովաքազու թագաւորի Իսրա-
18 յելի՝ ամս հնգետասան։ Եւ մնացորդք
բանից Ամասեայ [2]եւ ամենայն ինչ զոր
արար", ո՞չ ահաւասիկ գրեալ են ի գիրս
բանից աւուրց թագաւորացն Յուդայ։
19 Եւ գումարեցան ի վերայ նորա գունդք
յԵրուսաղէմ, եւ փախեաւ ի Լաքիս. եւ
առաքեցին զկնի նորա ի Լաքիս եւ սպա-
20 նին զնա անդ։ Եւ բարձին զնա ձիովք,
եւ թաղեցաւ յԵրուսաղէմ ընդ հարս իւր
21 ի քաղաքի Դաւթի։ Եւ ա՛ռ ամենայն
ժողովուրդն Յուդայ զԱզարիա, եւ նա
էր ամաց վեշտասանից, եւ թագաւորե-
ցուցին զնա փոխանակ հօր իւրոյ Ամա-
22 սեայ։ Նա շինեաց զԵղաթ, եւ դար-
ձոյց զնա անդրէն ի Յուդա, յետ ննջե-
լոյ արքայի ընդ հարս իւր։
23 Յամի հնգետասաներորդի Ամասեայ
որդւոյ Յովասու արքայի Յուդայ, թա-
գաւորեաց Յերոբովամ որդի Յովասու
արքայի Իսրայելի [2]ի վերայ Իսրայելի" ի
24 Սամարիա ամս քառասուն եւ մի։ Եւ
արար չար առաջի Տեառն, եւ ոչ մեկ-
նեցաւ յամենայն մեղաց Յերոբովամու
որդւոյ Նաբատայ որ յանցոյցն զԻսրա-
25 յէլ։ Նա [5]մերժեաց զսահմանս Իսրայելի
ի մտիցն Եմաթայ մինչեւ ցծովն [6]Արա-
բայ ըստ բանին Տեառն Աստուծոյ Իս-

[2]Յեբր. [illegible] [3]Եբր. զամենայն ոսկի [4]Եբր. պատանդս [5]Եբր. դարձոյց [6]Այսինքն, դաշտին

բայէլի՝ զոր խօսեցաւ ի ձեռն ծառայի
իւրոյ Յովնանու որդւոյ Ամաթեայ մար-
26 գարէի ի Գեթքոփերայ։ Զի եսես Տէր
զտառապանս Իսրայէլի զյոյժ դառնու-
թեան, եւ սակաւաւորս եւ նեղեալս եւ
անօսրացեալս եւ լքեալս, եւ ոչ ոք էր
27 որ օգնէր Իսրայէլի։ Եւ ոչ խօսեցաւ
Տէր ջնջել [1]զզաւակ Իսրայէլի ի ներքոյ
երկնից. եւ փրկեաց զնոսա Տէր [2]ի ձե-
ռաց Յերոբովամու որդւոյ Յովասու։
28 Եւ մնացորդք բանից Յերոբովամայ
եւ ամենայն ինչ զոր արար եւ զօրու-
թիւնք նորա զոր պատերազմեցաւ, եւ
որպէս վարձայց զԴամասկոս եւ [3]զԵմաթ
անդրէն առ Յուդա յԻսրայէլ", ո՞չ ա-
ւանիկ գրեալ են ի գիրս բանից աւուրց
29 թագաւորացն Իսրայէլի։ Եւ ննջեաց Յե-
րոբովամ ընդ հարս իւր ընդ թագաւորս
Իսրայէլի, եւ թագաւորեաց Զաքարիա
որդի նորա փոխանակ [4]հօր իւրոյ"։

## Գլ. ԺԵ

1 Յամի քսաներորդի եւթներորդի Յերո-
բովամայ արքայի Իսրայէլի, թագաւո-
րեաց Ազարիա որդի Ամասեայ արքայի
2 Յուդայ։ Որդի վեշտասան ամաց էր ի
թագաւորել իւրում, եւ յիսուն եւ եր-
կուս ամս թագաւորեաց յԵրուսաղէմ,
եւ անուն մօր նորա Յեքելիա յԵրու-
3 սաղեմէ։ Եւ արար [5]բարի առաջի Տեառն
ըստ ամենայնի զոր արար Ամասիա հայր
4 նորա, Բայց ի բարձանցն զոր ոչ եբարձ,
եւ տակաւին ժողովուրդն զոհէր եւ ար-
5 կանէր խունկս ի բարձունսն։ Եւ արկ
Տէր ձեռն ի թագաւորն, եւ էր բորո-
տեալ մինչեւ ցօր մահուան իւրոյ. եւ
նստէր ի տան [6]ափփուսովթ, եւ Յովա-
թամ որդի արքայի էր ի վերայ տանն
դատել զժողովուրդ երկրին։
6 Եւ մնացորդք բանից Ազարեայ եւ ա-
մենայն ինչ զոր արար, ո՞չ աւանիկ գրեալ
են ի գիրս բանից աւուրց թագաւորացն
7 Յուդայ։ Եւ ննջեաց Ազարիա ընդ հարս
իւր, եւ թաղեցին զնա առ հարս իւր
ի քաղաքի Դաւթի. եւ թագաւորեաց
Յովաթամ որդի նորա ընդ նորա։
8 Յամի երեսներորդի ութերորդի Ազա-
րեայ արքայի Յուդա թագաւորեաց Զա-
քարիա որդի Յերոբովամայ ի վերայ Իս-
9 րայէլի ի Սամարիա ամիսս վեց։ Եւ ա-
րար չար առաջի Տեառն որպէս արարին
հարք նորա, եւ ոչ մեկնեցաւ ի մեղացն
Յերոբովամայ որդւոյ Նաբատայ որ յան-
10 ցոյցն զԻսրայէլ։ Եւ [7]գումարեցան ի վերայ
նորա Սեղղում որդի Յաբիսայ եւ [8]Կեբ-
դաամ, եւ հարին զնա յանդիման ժո-
ղովրդեանն եւ սպանին" զնա, եւ թա-
գաւորեաց Սեղղում ընդ նորա։
11 Եւ մնացորդք բանից Զաքարեայ ա-
հա գրեալ են ի գիրս բանից աւուրց
12 թագաւորացն Իսրայէլի։ Այս է բան
Տեառն զոր խօսեցաւ առ Յէու եւ ա-
սէ, Որդիք չորրորդք նստցին քեզ յա-
թոռն Իսրայէլի. եւ եղեւ այնպէս։
13 Եւ Սեղղում որդի Յաբիսայ թագաւո-
րեաց յամին երեսներորդի իններորդի [9]Ա-
զարեայ արքայի Յուդայ. եւ թագաւո-
րեաց Սեղղում ամսօրեայ մի աւուրց ի
14 Սամարիա։ Եւ ել Մանայեմ որդի Գադ-
դեայ ի Թերսայ, եւ եմուտ ի Սամարիա
եւ եհար զՍեղղում զորդի Յաբիսայ ի
Սամարիա, եւ սպան զնա եւ թագա-
ւորեաց ընդ նորա։
15 Եւ մնացորդք բանից Սեղղումայ եւ
գումարտութիւնք նորա զոր գումարեցաւ՝
ահաւասիկ գրեալ են ի գիրս բանից ա-
16 ւուրց թագաւորացն Իսրայէլի։ Յայնժամ
ժամանակի եհար Մանայեմ զԹափսա եւ
զամենայն ինչ որ ի նմա, եւ զսահմանս
նորա ի Թերսայէ. քանզի ոչ բացին նմա.
եւ եհար զնա եւ զյղիս նորա ապատառեաց։
17 Յամի երեսներորդի իններորդի Ազա-
րեայ արքայի Յուդայ թագաւորեաց Մա-
նայեմ որդի Գադդեայ ի վերայ Իսրայե-
18 լի ի Սամարիա ամս տասն։ Եւ արար
չար առաջի Տեառն, եւ ոչ մեկնեցաւ
յամենայն մեղացն Յերոբովամու որդւոյ
Նաբատայ որ յանցոյցն զԻսրայէլ [10]մե-
ղօք իւրովք"։
19 Եւ ել Փուա արքայ Ասորեստանեայց
ի վերայ երկրին. եւ Մանայեմ ետ Փուայ
հազար տաղանդ արծաթոյ՝ լինել ձեռին
նորա ընդ նմա, հաստատել զթագաւո-
20 րութիւնն [11]ի ձեռն սորա"։ Եւ արկ Մա-
նայեմ զարծաթն ի վերայ Իսրայէլի, ի
վերայ ամենայն զօրաւորի զօրութեամբ՝
տալ արքային Ասորեստանեայց յիսուն
սիկղ արծաթոյ առ այր մի, եւ դարձաւ

[1] Եբր. զանուն [2] Եբր. ի ձեռն [3] Եբր. զԷմաթ Յուդայ՝ անդրէն յԻսրայէլ [4] Եբր. նորա [5] Եբր. ուղղութիւն [6] Նշանակէ՝ առանձինն

[7] Եբր. գումարեցաւ [8] Եբր. եհար զնա յանդիման ժողովրդեանն եւ սպան [9] Եբր. Ոզիայ [10] Եբր. զամենայն աւուրս իւր [11] Եբր. ի ձեռին նորա

արքային Ասորեստանեայց, եւ ոչ եկաց
յերկրին։
21 Եւ մնացորդք բանից Մանայեմայ եւ
ամենայն ինչ զոր արար՝ ո՞չ աւանիկ
գրեալ են ի գիրս բանից աւուրց թա-
22 գաւորացն Իսրայէլի։ Եւ ննջեաց Մա-
նայեմ ընդ հարս իւր, եւ թագաւորեաց
Փակէիա որդի նորա ընդ նորա։
23 Յամի յիսներորդի Ազարեայ արքայի
Յուդայ թագաւորեաց [1]Փակէիա ի վե-
րայ Իսրայէլի ի Սամարիա ամս [2]տասն։
24 Եւ արար չար առաջի Տեառն, եւ ոչ
մեկնեցաւ ի մեղացն Յերոբովամայ որդ-
ւոյ Նաբատայ որ յանցոյցն զԻսրայէլ։
25 Եւ գումարեցաւ ի վերայ նորա Փակէէ
որդի Ռովմելեայ ասպարազէն իւր, եւ ե-
հար զնա ի Սամարիա [3]առաջի տանն ար-
քայի. եւ ընդ նմա Արգոբ, եւ ընդ նմա
Արիէ, եւ ընդ նմա յիսուն այր [4]ի չո-
րեքհարիւրոցն. եւ սպան զնա եւ թա-
գաւորեաց ընդ նորա։
26 Եւ մնացորդք բանիցն Փակէի եւ ա-
մենայն ինչ զոր արար՝ ահա գրեալ են
ի գիրս բանից աւուրց թագաւորացն
Իսրայէլի։
27 Յամի յիսներորդի եւ երկրորդի Ա-
զարեայ արքայի Յուդայ թագաւորեաց
Փակէէ որդի Ռովմելեայ ի վերայ Իսրայէ-
28 լի ի Սամարիա ամս քսան։ Եւ արար
չար առաջի Տեառն, եւ ոչ մեկնեցաւ
[5]յամենայն մեղացն՚՚ Յերոբովամայ որդ-
ւոյ Նաբատայ որ յանցոյցն զԻսրայէլ։
29 Յաւուրս Փակէի արքայի Իսրայէլի եկն
Թագղաթփաղասար արքայ Ասորեստա-
նեայց, եւ առ զԱյին եւ [6]զԿարբէլ, զԲեթ-
մաաքա եւ զՅանովէ եւ զԿենէզ՚՚ եւ զԱ-
սովր եւ զԳաղաադ եւ զԳալիլեա, զա-
մենայն երկիրն Նեփթաղիմայ, եւ խա-
30 ղացոյց զնոսա յԱսորեստանեայս։ Եւ
գումարեաց գունդ Ովսէէ որդի Եղայ ի
վերայ Փակէի որդւոյ Ռովմելեայ, եւ ե-
հար զնա եւ սպան զնա, եւ թագա-
ւորեաց ընդ նորա յամի քսաներորդի Յո-
վաթամայ որդւոյ Ոզիայ։
31 Եւ մնացորդք բանից Փակէի եւ ա-
մենայն ինչ զոր արար՝ ահաւանիկ գրեալ
են ի գիրս բանից աւուրց թագաւորացն
Իսրայէլի։

32 Յամի երկրորդի Փակէի որդւոյ Ռով-
մելեայ թագաւորի Իսրայէլի թագաւո-
րեաց Յովաթամ որդի Ոզիայ արքայի
33 Յուդայ։ Որդի քսան եւ հինգ ամաց էր
ի թագաւորել իւրում, եւ վեշտասան
ամ թագաւորեաց յԵրուսաղէմ, եւ ա-
նուն մօր նորա Յերուսա դուստր Սա-
34 դովկայ։ Եւ արար ուղղութիւն առաջի
Տեառն ըստ ամենայնի զոր արար Ոզիա
35 հայր նորա, Բայց ի բարձանցն զոր ոչ
եբարձ, եւ տակաւին ժողովուրդն զոհէր
եւ արկանէր խունկս ի բարձունսն. Նա
շինեաց զդուռն տանն Տեառն զվերին։
36 Եւ մնացորդք բանից Յովաթամայ եւ
ամենայն ինչ զոր արար՝ ո՞չ աւանիկ
գրեալ են ի գիրս բանից աւուրց թա-
գաւորացն Յուդայ։
37 Յաւուրսն յայնոսիկ սկսաւ Տէր առա-
քել ի Յուդա զՌասոն արքայ Ասորւոց,
38 եւ զՓակէէ որդի Ռովմելեայ։ Եւ ննջեաց
Յովաթամ ընդ հարս իւր, եւ թաղե-
ցաւ առ հարս իւր ի քաղաքին Դաւթի
հօր իւրոյ. եւ թագաւորեաց Աքազ որ-
դի նորա ընդ նորա։

ԳԼ. ԺԶ

1 Յամի եւթնուտասներորդի Փակէի որդ-
ւոյ Ռովմելեայ թագաւորեաց Աքազ որդի
2 Յովաթամայ արքայի Յուդայ։ Որդի ա-
մաց քսանից էր Աքազ ի թագաւորել
իւրում, եւ վեշտասան ամ թագաւո-
րեաց յԵրուսաղէմ. եւ ոչ արար ուղ-
ղութիւն առաջի Տեառն [7]Աստուծոյ հա-
ւատարմութեամբ՚՚ իբրեւ զԴաւիթ զհայր
3 իւր. Եւ գնաց [8]զճանապարհ Յերոբովա-
մայ որդւոյ Նաբատայ արքայի՚՚ Իսրա-
յէլի, նա եւ զորդի իւր անցոյց ընդ հուր
ըստ պղծութեանց ազգացն զորս եբարձ
4 Տէր յերեսաց որդւոցն Իսրայէլի։ Եւ
զոհէր եւ արկանէր խունկս ի բարձունս,
եւ ի վերայ բլրոց եւ ի ներքոյ անտա-
ռախիտ ծառոց։
5 Յայնժամ ել Ռասոն արքայ Ասորւոց
եւ Փակէէ որդի Ռովմելեայ արքայ Իսրա-
յէլի յԵրուսաղէմ ի պատերազմ, եւ պա-
շարէին զնա ի վերայ Աքազու. եւ ոչ
6 կարէին պատերազմել։ Ի ժամանակին
յայնմիկ դարձոյց Ռասոն արքայ Ասոր-
ւոց զԵղաթ յԱսորիս, եւ եհան զՀրէայսն
յԵղաթայ, եւ եկին [9]Եդովմայեցիք յԵ-

---

[1]Օրին. Փակէիա որդի Մանայեմայ [2]Օրին. եր-
կուս [3]Օրին. յապարանս [4]Օրին. յորդւոց Գա-
ղաադացւոց [5]Օրին. ի մեղացն [6]Օրին. զԱբէլ-
բեթմաաքա եւ զՅանովէն եւ զԿադէս

[7]Օրին. Աստուծոյ իւրոյ [8]Օրին. զճանապարհ թա-
գաւորացն [9]Կամ, Ասորիք

լաթ եւ բնակեցին անդ մինչեւ ցայ-
7 սօր ։ Եւ առաքեաց Աքազ հրեշտակս առ
Թագղաթփաղասար արքայ Ասորեստա-
նեայց եւ ասէ , Ծառայ քո եւ որդի քո
եմ ես , ել եւ փրկեա զիս ի ձեռաց ար-
քային Ասորւոց եւ ի ձեռաց արքային Իս-
8 րայէլի՝ յարուցելոց ի վերայ իմ ։ Եւ առ
Աքազ զարծաթ եւ զոսկի զգտեալս ի տան
Տեառն եւ ի գանձս տան թագաւորին, եւ ա-
ռաքեաց արքային Ասորեստանեայց պա-
9 տարագս ։ Եւ լուաւ նմա արքայն Ասո-
րեստանեայց, եւ ել արքայն Ասորեստան-
եայց ի Դամասկոս եւ առ զնա, եւ փոխեաց
զնա ի գերութիւն ի Կիւրէն, եւ զՌասին
10 սպան։ Եւ չոգաւ արքայ Աքազ ընդ առաջ
Թագղաթփաղասարայ արքային Ասորես-
տանեայց ի Դամասկոս, եւ ետես զսեղանն
որ ի Դամասկոս , եւ առաքեաց արքայ
Աքազ առ Ուրիա քահանայ զնմանութիւն
սեղանոյն եւ զձեւ նորա՝ ըստ ամենայն
11 գործուածոյն նորա ։ Եւ շինեաց Ուրիա
քահանայ զսեղանն ըստ ամենայնի որպէս
առաքեաց արքայ Աքազ ի Դամասկոսէ ,
նոյնպէս արար Ուրիա քահանայ մինչեւ
ի գալ արքայի Աքազու ի Դամասկոսէ ։
12 [1]Ետես զսեղանն", եւ մատեաւ արքայ
13 ի սեղանն եւ [2]ել ի վեր". Եւ ճենճերեաց
զողջակէզսն իւր եւ զզոհսն. եւ նուիրեաց
զնուէրս իւր , եւ եհեղ զարիւն խաղա-
14 ղականաց [3]իւրոց ։ Եւ զսեղանն պղնձի
որ կայր առաջի Տեառն՝ փոխեաց յերե-
սաց [4]տանն Տեառն ի սեղուոջէ իւրմէ",
եւ եդ զնա ի կողմանէ սեղանոյն ընդ
15 հիւսիսի ։ Եւ պատուէր ետ արքայ Ա-
քազ Ուրիայ քահանայի եւ ասէ , Ի վե-
րայ մեծի սեղանոյդ մատուցանիցես զող-
ջակէզս առաւօտին եւ զզոհս երեկո-
յին եւ զողջակէզս արքայի եւ զզոհս
նորա , եւ զողջակէզս ժողովրդեան երկ-
րիս եւ զզոհս նոցա եւ զնուէրս նոցա ,
եւ զամենայն արիւն ողջակիզաց եւ զա-
մենայն արիւն զոհից ի վերայ նորա հե-
ղուցուս . բայց սեղանն պղնձի եղիցի
16 ինձ [5]յառաւօտին ։ Եւ արար Ուրիա քա-
հանայ ըստ ամենայնի որպէս պատուի-
17 րեաց նմա արքայ Աքազ։ Եւ կոտորեաց
արքայ Աքազ զադխսն մեքենոլթացն ,
եւ [6]փոխեաց ի նոցանէն զաւազանն ,
եւ զծովն իջոյց ի ցլուցն պղնձեաց [7]որ-
կատատանեցունց որ ի ներքոյ նորա , եւ
18 եդ զնա ի վերայ քարեղէն խարսխի ։ Եւ
[8]զհիմն աթոռոյն" շինեաց ի տան Տեառն ,
եւ զմուտ թագաւորին զարտաքին դար-
ձոյց ի տուն Տեառն յերեսաց արքային
Ասորեստանեայց ։
19 Եւ մնացորդք բանից Աքազու զոր ա-
րար՝ ո՞չ ահաւասիկ գրեալ են ի գիրս բա-
20 նից աւուրց թագաւորացն Յուդայ ։ Եւ
ննջեաց Աքազ ընդ հարս իւր , եւ թա-
ղեցաւ ընդ հարս իւր ի քաղաքին Դաւ-
թի . եւ թագաւորեաց Եզեկիա որդի
նորա ընդ նորա ։

## Գլ. ԺԷ

1 Յամի երկոտասաներորդի Աքազու ար-
քայի Յուդայ , թագաւորեաց Ովսէէ որ-
դի Ելայ ի վերայ Իսրայելի ի Սամարիա
2 ամս ինն ։ Եւ արար չար առաջի Տեառն ,
բայց ոչ իբրեւ զթագաւորսն Իսրայելի
3 որ էին յառաջ քան զնա ։ Ի վերայ նո-
րա ել Սաղմանասար արքայ Ասորեստա-
նեայց , եւ եղեւ նմա Ովսէէ ծառայ ,
4 եւ տայր տանել նմա [9]մաննայ ։ Եւ ե-
գիտ արքայ Ասորեստանեայց յՈվսէէ
նենգ . զի առաքեաց հրեշտակս առ Սո-
վա արքայ Եգիպտացւոց , եւ ոչ ետ
[9]մաննայ արքային Ասորեստանեայց [10]ի
տարւոջն յայնմիկ". եւ պաշարեաց զնա
արքայն Ասորեստանեայց . եւ կապեաց
5 զնա ի տան բանտի ։ Եւ ել արքայն Ա-
սորեստանեայց յամենայն երկիրն , ել եւ
ի Սամարիա եւ պաշարեաց զնա ամս երիս։
6 Յամին իններորդի Ովսեայ առ արքայ
Ասորեստանեայց զՍամարիա , եւ խա-
ղացոյց զԻսրայէլ յԱսորեստանեայս , եւ
բնակեցոյց զնոսա յԱղաթ եւ յԱբովր՝
զգետովն Գովզանայ եւ [11]զլերամբքն
7 Մարաց ։ Եւ եղեւ իբրեւ մեղան որդիքն
Իսրայելի Տեառն Աստուծոյ իւրեանց որ
եհան զնոսա յերկրէն Եգիպտացւոց՝ ի
ձեռաց Փարաւոնի արքային Եգիպտաց-
ւոց , եւ երկեան յաստուածոց օտարաց ,
8 Եւ գնացին ըստ կրօնից ազգացն զորս
եբարձ Տէր յերեսաց որդւոց [12]Իսրայելի ։
9 Եւ թագաւորքն Իսրայելի արշաւք ինչ

[1] Ներ. Եւ եկն արքայ ի Դամասկոսէ եւ ետես արքայ զսեղանն [2] Կամ, եհան ի վերայ նորա ողջակէզս [3] Ներ. իւրոց ի վերայ սեղանոյն [4] Ներ. տանն՝ ի միջոյ սեղանոյն եւ ի միջոյ տանն Տեառն [5] Կամ, ի հմայս

[6] Ներ. եբարձ [7] Յներ. պակաս [8] Ներ. զարահ շաբաթուն զոր [9] Ներ. մինհա, այսինքն՝ ընծայ. կամ, հարկ [10] Ներ. որպէս ամ ըստ ամէ [11] Ներ. ի քաղաքս [12] Ներ. Իսրայելի , եւ ըստ որոց արարին թագաւորքն Իսրայելի . (9) Եւ

արարին եւ որչափ ինչ՝՝ պաճուճեցին
որդիքն Իսրայէլի բան, [1]ոչ այնպէս ինչ
զՏեառնէ՝՝ Աստուծոյ իւրեանց. եւ շինե-
ցին իւրեանց բարձունս յամենայն քա-
ղաքս իւրեանց, յաշտարակէ պահապա-
10 նացն մինչեւ ի քաղաքն ամուր։ Եւ
կանգնեցին իւրեանց արձանս եւ ան-
տառս յամենայն բլուրս բարձունս, եւ
ի ներքոյ ամենայն անտառախիտ ծա-
11 ռոց. Եւ արկանէին խունկս յամենայն
բարձունս, իբրեւ զամենայն ազգսն զորս
մերժեաց Տէր յերեսաց [2]նոցա. արարին
զոլոզս եւ ընկերշակեցին՝՝ առ ի բար-
12 կացուցանելոյ զՏէր. Եւ պաշտեցին
զկուռս, [3]որում ասաց նոցա Տէր թէ
Մի առնիցէք զբանդ զայդ [4]Տեառն։
13 Եւ եղ վկայութիւն Տէր ընդ Իսրա-
յէլի եւ ընդ Յուդայ ի ձեռն ամենայն
մարգարէից իւրոց, ամենայն տեսանո-
ղաց, եւ ասէ, Դարձարուք ի ճանապար-
հաց ձերոց չարաց, եւ պահեցէք զպա-
տուիրանս իմ եւ զիրաւունս իմ [5]եւ զամե-
նայն օրէնս՝՝ զոր պատուիրեցի հարց ձերոց,
զորս առաքեցի առ ձեզ ի ձեռն ծառայից
14 իմոց մարգարէից։ Եւ ոչ լուան նոքա, եւ
խստացուցին զողն իւրեանց [6]քան զողն
հարց իւրեանց, որ ոչ հաւատացին ի Տէր
15 Աստուած իւրեանց. Եւ ընկեցին ի բաց
զհաստատութիւնս [7]իւրեանց, եւ զպա-
շտման զոր կռեաց ընդ հարս նոցա, եւ
զվկայութիւնս նորա զոր ուխտեաց նո-
ցա ոչ պահեցին. եւ գնացին զհետ ունա-
յնեաց, եւ ունայնացան զհետ ազգացն որ
շուրջ զնոքօք, յորոց պատուիրեաց նոցա
16 Տէր չառնել ըստ նմին օրինակի։ Թողին
զամենայն պատուիրանս Տեառն Աստու-
ծոյ իւրեանց, եւ արարին իւրեանց ձու-
լածոյս, երկուս երինջս, [8]եւ երկիր պա-
գին՝՝ զօրութեան երկնից, եւ պաշտեցին
17 զԲահաղ, Եւ անցուցին զուստերս եւ
զդստերս իւրեանց ընդ հուր, եւ զհմայ-
ցին զհմայութիւնս եւ հմայեցին հմայս,
եւ համարձակեցան առնել չար առաջի
18 Տեառն առ ի բարկացուցանելոյ զնա։ Եւ
բարկացաւ Տէր յոյժ Իսրայէլի, եւ մեր-
ժեաց զնոսա յերեսաց իւրոց. եւ ոչ մնաց՝
բայց միայն ցեղն Յուդայ։

19 Սակայն եւ Յուդա ոչ պահեցին զպա-
տուիրանս Տեառն Աստուծոյ իւրեանց,
եւ գնացին ըստ կրօնիցն Իսրայէլի զոր
20 արարին։ Եւ [9]մերժեցին զՏէր յամենայն
զաւակէն՝՝ Իսրայէլի. եւ չարժեաց զնո-
սա եւ ետ զնոսա ի ձեռս աւարառուաց
իւրեանց, մինչեւ ընկէց զնոսա յերեսաց
21 իւրոց։ [10]Սակայն Իսրայէլ առ տամբն իւր
Դաւթի՝՝ թագաւորեցուցին զՅերոբովամ
որդի Նաբատայ. եւ մերժեաց Յերոբո-
վամ զԻսրայէլ ի գնալոյ Տեառն, եւ
22 մեղոյց զնոսա մեղս մեծամեծս։ Եւ ա-
րարին որդիքն Իսրայէլի ըստ ամենայն
մեղաց Յերոբովամու զոր արար, եւ ոչ
23 մերժեցան ի նոցանէն, Մինչեւ փոխեաց
Տէր զԻսրայէլ յերեսաց իւրոց, որպէս
եւ խօսեցաւ Տէր ի ձեռն ամենայն ծա-
ռայից իւրոց մարգարէից. եւ վարեցաւ
Իսրայէլ յերկրէ իւրմէ յԱսորեստանեայս
24 մինչեւ ցայսօր։ Եւ ած արքայն Ասորես-
տանեայց ի Բաբելոնէ եւ ի Քութայ եւ
յԱյայ եւ յԵմաթայ եւ ի Սեփարուի-
մայ, [11]եւ բնակեցան ի քաղաքս Սամա-
րիայ փոխանակ որդւոցն Իսրայէլի, եւ
ժառանգեցին զՍամարիա, եւ բնակեցին
25 ի քաղաքս նորա։ Եւ եղեւ ի սկզբան
բնակութեան նոցա անդ ոչ երկեան ի
Տեառնէ. եւ առաքեաց Տէր [12]առեւծս եւ
26 կոտորէին զնոսա։ Եւ խօսեցան ընդ ար-
քային Ասորեստանեայց եւ ասեն, Ազգքն
զոր փոխեցեր եւ նստան [4]փոխանակաւ
ի քաղաքս Սամարիայ՝ ոչ գիտեն զկրօնս
Աստուծոյ երկրին, եւ առաքեաց [4]Տէր
ի նոսա առեւծս, եւ ահա կոտորեն զնո-
սա. քանզի ոչ գիտեն զկրօնս Աստու-
27 ծոյ երկրին։ Եւ հրաման ետ արքայն
Ասորեստանեայց եւ ասէ, Տարայք անդր
զմի ոք ի քահանայիցն զերելոց անտի
զի երթեալ բնակեսցէ անդ, եւ ցուցցէ
զկրօնս [4]Տեառն, եւ լուսաւորեսցէ զնո-
28 սա իրաւամբք՝՝ Աստուծոյ երկրին։ Եւ
տարան զմի ի քահանայիցն զոր գերեցին
ի Սամարիայ. եւ նստաւ ի Բեթէլ, եւ
լուսաւորէր զնոսա, [13]զի երկնչիցին ի
29 Տեառնէ։ Եւ արարին ազգք ազգք աս-
տուածս իւրեանց, եւ եդին ի տունս
բարձանցն զոր արարին Սամարացիքն.
իւրաքանչիւր ազգքն ի քաղաքս իւր-

---

[1]Օրն. որ ոչ էր ուղիղ առաջի Տեառն [2]Օրն. նոցա, եւ արարին բանս չարս [3]Օրն. որոց վասն [4]Յօրն. զ—լ—ե [5]Օրն. ըստ ամենայն օրինաց [6]Օրն. իբրեւ [7]Օրն. նորա [8]Օրն. եւ արարին Աշերա, (Ելք ԼԴ. 13). եւ երկիր պագին ամենայն

[9]Օրն. մերժեաց Տէր զամենայն զաւակ [10]Օրն. Զի պատառեցաւ Իսրայէլ ի տանէն Դաւթի, եւ [11]Օրն. բնակեցոյց [12]Օրն. ի նոսա առեւծս [13]Օրն. թէ զկարգ

30 հանց յորս ինքեանք բնակէին ։ Եւ արք
Բաբելոնի արարին զՍոքքովթ Բա-
նովթ, եւ արք Քութայ արարին զՍն-
գեղ, եւ արք Եմաթայ արարին զԱսի-
31 մաթ, Եւ Այնացիք արարին [1]զԱբլազեր
եւ՝ զՆեբասս եւ զԹարթակ եւ [2]զՍե-
փարուիմ, ուր՝ այրէին զորդիս իւրեանց
ի հուր Ադրամելեքայ եւ Անամելեքայ
32 աստուածոց Սեփարուիմայ. [1]Եւ երկն-
չէին ի Տեառնէ, եւ բնակեցուցին զզար-
շելիսն իւրեանց ի տունս բարձանցն զոր
արարին ի Սամարիա իւրաքանչիւր ազ-
գաց յորում բնակէին ։՝ Եւ երկնչէին ի
Տեառնէ, եւ արարին իւրեանց քուրմս
33 [3]բարձանց ։ Եւ երկնչէին ի Տեառնէ, եւ
պաշտէին զաստուածս իւրեանց, ըստ
կրօնից ազգացն՝ զորս Աստուած մեր-
ժեաց անտի ։
34 Եւ մինչեւ ցայսօր առնէին նոքա ըստ
[4]կրօնից նոցա, եւ երկնչէին ի Տեառ-
նէ. եւ՝ առնէին ըստ կրօնից [5]նոցա եւ
ըստ իրաւանց [6]նոցա եւ՝ ըստ օրինաց
եւ ըստ պատուիրանին զոր պատուի-
րեաց Տէր որդւոցն Յակոբայ, որում
35 եդ անուն Իսրայէլ ։ Եւ ուխտեաց Տէր
ուխտ եւ պատուիրեաց նոցա եւ ասէ,
Մի՛ երկնչիցիք յաստուածոց օտարաց,
եւ մի՛ երկիր պագանիցէք նոցա, եւ մի՛
պաշտիցէք զնոսա, եւ մի՛ զոհիցէք նո-
36 ցա. Այլ Տեառն [1]Աստուծոյ որ եհան զձեզ
յերկրէն Եգիպտացւոց մեծաւ զօրու-
թեամբ եւ բարձր բազկաւ, ի նմանէ
երկնչիցիք, եւ նմա երկիր պագանիցէք եւ
37 նմա զոհիցէք. Եւ իրաւանց եւ դատաս-
տանաց եւ օրինաց եւ պատուիրանացն
զորս գրեաց ձեզ՝ զգուշանայցէք առնել.
եւ մի՛ երկնչիցիք յաստուածոց օտա-
38 րաց. Եւ զուխտն զոր ուխտեաց ընդ
ձեզ՝ մի՛ ցրիցէք. եւ մի՛ երկնչիցիք յաս-
39 տուածոց օտարաց. Այլ ի Տեառնէ Աս-
տուծոյ ձերմէ երկնչիցիք, եւ նա փրկես-
ցէ զձեզ յամենայն թշնամեաց ձերոց ։
40 Եւ [7]մի՛ ունկնդիր լինիցիք կրօնից նոցա
41 զոր նոքա առնիցեն՝ ։ Եւ երկնչէին ազգքն
այնոքիկ ի Տեառնէ, եւ դրօշելոց իւր-
եանց ծառայէին. եւ որդիք նոցա եւ

[1] Յեբր. գոլոտ [2] Եբր. Սեփարուիմացիք [3] Եբր. բարձանց, եւ զոհէին վասն նոցա ի տունս բարձանցն [4] Եբր. առաջին կրօնից. ոչ երկնչէին ի Տեառնէ, եւ ոչ [5] Եբր. իւրեանց [6] Եբր. իւրեանց, եւ ոչ [7] Եբր. ոչ լուան, այլ ըստ առաջին սովորութեան իւրեանց առնէին

որդիք որդւոց նոցա որպէս արարին հարք
իւրեանց, առնեն մինչեւ ցայսօր ։

## ԳԼ. ԺԸ

1 Եւ եղեւ յամին երրորդի Ովսէի որդ-
ւոյ Եղայ արքայի Իսրայելի թագաւո-
րեաց Եզեկիա որդի Աքազու արքայի
2 Յուդայ ։ Որդի քսան եւ հինգ ամաց էր
ի թագաւորել իւրում, եւ քսան եւ ինն
ամ թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ ա-
նուն մօր նորա [8]Աբութ՝ դուստր Զա-
3 քարեայ ։ Եւ արար ուղղութիւն առաջի
Տեառն ըստ ամենայնի զոր արար Դա-
4 ւիթ հայր նորա ։ Նա եբարձ զբարձունսն
եւ խորտակեաց [9]զամենայն արձանսն՝
եւ կոտորեաց զանտառսն, եւ զօձն
պղնձի զոր արար Մովսէս, զի մինչեւ
ցայն աւուրս [10]զոհէին նմա որդիքն Իս-
րայելի, եւ [11]կոչեցին զնա Նէեսթան ։
5 Ի Տէր Աստուած Իսրայելի յուսացաւ.
եւ յետ նորա նման նմա ոչ եղեւ յա-
մենայն թագաւորս Յուդայ եւ յեղեալսն
6 յառաջագոյն քան զնա ։ Յարեցաւ ի Տէր
եւ ոչ մեկնեցաւ ի գնացից նորա, եւ
պահեաց զպատուիրանս նորա զոր պա-
7 տուիրեաց [12]Մովսէս ։ Եւ էր Տէր ընդ
նմա, յամենայնի զոր ինչ եւ առնէր՝
խելամուտ լինէր. եւ ոչ կամեցաւ զարքայն
8 Ասորեստանի եւ ոչ ծառայեաց նմա ։ Նա
եհար [13]զայլազգիսն մինչեւ ցԳազա եւ
մինչեւ ցսահմանս նորա, յաշտարակէ
պահապանացն մինչեւ ցքաղաքն ամուր ։
9 Եւ եղեւ յամին չորրորդի Եզեկեայ
արքայի, այն է ամ եւթներորդ Ովսեայ
որդւոյ Եղայ արքայի Իսրայելի, ել Սաղ-
մանասար արքայ Ասորեստանեայց ի վե-
10 րայ Սամարիայ, եւ պաշարեաց զնա. Եւ
առ զնա ի կատարել ամաց երից, յամի
վեցերորդի Եզեկեայ, այն ամ իններորդ
էր Ովսեայ արքայի Իսրայելի, առաւ
11 Սամարիա ։ Եւ խաղացոյց արքայն Ա-
սորեստանեայց [14]զՍամարիա յԱսորես-
տանեայս, եւ նստոյց զնոսա յԱղաթ եւ
յԱբովր՝ առ գետովն Գովզանայ եւ [15]լե-
12 րամբքն Մարաց. Զի ոչ լուան ձայնի
Տեառն Աստուծոյ իւրեանց, եւ անցին
զուխտիւ նորա ըստ ամենայնի զոր պա-

[8] Եբր. Աբիա [9] Եբր. զարձանսն [10] Եբր. խունկս արկանէին [11] Եբր. կոչեաց [12] Եբր. Տէր Մովսէսի [13] Եբր. զՓղշտացիսն, որպէս և քաղաքս ուրեք [14] Եբր. զԻսրայէլ [15] Եբր. ի քաղաքս

տուփրեաց նոցա Մովսէս ծառայ Տեառն .
ոչ լուան եւ ոչ արարին ։
13 Եւ յամին չորեքտասաներորդի ար-
քային Եզեկիայ, ել Սենեքերիմ արքայ
Ասորեստանեայց ի վերայ ամուր ամուր
14 քաղաքացն Յուդայ, եւ առ զնոսա ։ Եւ
առաքեաց Եզեկիա արքայ Յուդայ հրեշ-
տակս առ արքայ Ասորեստանեայց ի
Լաքիս եւ ասէ, Մեղայ, դարձիր յի-
նէն, եւ զոր ինչ դիցես ի վերայ իմ՝
բարձից . եւ եդ արքայն Ասորեստանեայց
ի վերայ Եզեկիայ արքայի Յուդայ երեք-
հարեւր տաղանդ արծաթոյ եւ երեսուն
15 տաղանդ ոսկւոյ ։ Եւ ետ Եզեկիա զա-
մենայն արծաթ գտեալ ի տան Տեառն
16 եւ ի գանձս տան թագաւորին ։ Ի ժա-
մանակի յայնմիկ կոտորեաց Եզեկիա
զդրունս տաճարին Տեառն, եւ զսեամսն
զոր պատեաց ոսկւով Եզեկիա արքայ
Յուդայ, եւ ետ զայն արքային Ասո-
րեստանեայց ։
17 Եւ առաքեաց արքայ Ասորեստանեայց
զԹարաթան եւ զՌաբսարիս եւ զՌափ-
սակ ի Լաքիսայ առ արքայ Եզեկիա զօ-
րու ծանու ի վերայ Երուսաղեմի . եւ
ելին եւ եկին յԵրուսաղէմ, եւ կացին
ի վերայ ջրմղին վերնոյ աւազանին, որ
է ի ճանապարհի ագարակին թափչի .
18 Եւ աղաղակեցին առ Եզեկիա . եւ ելին
առ նոսա Եղիակիմ որդի Քեղկեայ հա-
զարապետ, եւ Սոմնաս դպրապետ, եւ
Յովաք որդի Ասափայ որ ի վերայ յի-
շատակաց ։
19 Եւ ասէ ցնոսա Ռափսակ, Ասացէք ցԵ-
զեկիա, այսպէս ասէ արքայ մեծ, ար-
քայն Ասորեստանեայց . Զի՞նչ իցէ յոյսն
20 յոր դու յուսացեալ իցես . [1]Բայց եթէ
ասիցես՝ թէ Բանք շրթանց, եւ խոր-
հուրդ եւ զօրութիւն պիտոյ իցէ ի պա-
տերազմ" . եւ արդ յո՞ յուսացեալ նշկա-
21 հեցեր զիս ։ Ահա յուսացեալ իցես ի
ցուպն եղեգնեայ ջաղջախեալ՝ յԵգիպ-
տոս, յոր թէ յենուցու այր՝ մտանիցէ
ընդ ձեռս նորա, եւ խոցիցէ զնա . այնպէս
Փարաւոն արքայ Եգիպտացւոց ամենայն
22 յուսացելոց իւրոց ։ Եւ զի ասացեր ցիս՝
թէ ի Տէր Աստուած[2] յուսացեալ եմք,
ո՞չ դա այն է՝ զորոյ մերժեաց Եզեկիա
զբարձունս նորա եւ զսեղանս նորա,
եւ ասէ ցՅուդա եւ ցԵրուսաղէմ, Ա-
ռաջի սեղանոյս այսորիկ երկիր պագէք
23 յԵրուսաղէմ ։ Եւ արդ այլ խառնեցա-
րուք ի տէր իմ արքայ Ասորեստանեայց,
եւ տաց քեզ երկուս հազարս երիվարաց,
եթէ կարասցես տալ դու քեզ հեծեալս
24 ի վերայ նոցա ։ Եւ զիա՞րդ կարիցես զդէմ
ունել միոյ ուրուք կուսակալի ի ծա-
ռայից տեառն իմոյ ի յետնոց, զի յու-
սացեալ ես յԵգիպտոս ի կառս եւ յերի-
25 վարս ։ Իսկ արդ առանց Տեառն ինչ ե-
լանիցեմք ի տեղիս յայս ապականել
զսա . Տէր ասաց ցիս, Ել յերկիրն յայն
եւ ապականեա զնա ։
26 Եւ ասէ Եղիակիմ որդի Քեղկեայ եւ
Սոմնաս եւ Յովաք Ասափայ՝ ցՌափ-
սակ, Խօսեաց ընդ ծառայս քո Ասորե-
րէն, քանզի լսեմք մեք . եւ մի՛ խօսիր
Հրեարէն յականջս ժողովրդեանդ որ կան
27 ի պարսպիդ ։ Եւ ասէ ցնոսա Ռափսակ,
Միթէ առ տէրն քո եւ առ քե՞զ առա-
քեաց զիս տէր իմ խօսել զբանս զայ-
սոսիկ . ո՞չ ապաքէն առ արս որ նստին
ի վերայ պարսպիդ՝ ուտել զաղբ իւ-
րեանց եւ ըմպել զմէզ իւրեանց ձեւք
հանդերձ ։
28 Եւ յարեաւ Ռափսակ, եւ աղաղա-
կեաց մեծաձայն Հրեարէն եւ խօսեցաւ
եւ ասէ, Լուարուք զպատգամս ար-
քային մեծի, արքային Ասորեստանեայց .
29 Այսպէս ասէ արքայ . Մի՛ հպարտացուս-
ցէ զձեզ Եզեկիա, զի ոչ կարէ ապրե-
30 ցուցանել զձեզ ի ձեռաց իմոց . Եւ մի՛
յուսացուսցէ զձեզ Եզեկիա ի Տէր, եւ
ասասցէ եթէ Փրկելով փրկէ զմեզ Տէր,
եւ ոչ մատնեսցի քաղաքս ի ձեռս ար-
31 քային Ասորեստանեայց ։ Մի՛ լսէք Ե-
զեկիայ, զի այսպէս ասէ արքայն Ասո-
րեստանեայց . Արարէք ընդ իս [3]օրհնու-
թիւն, եւ ելէք առ իս . եւ կերիցէ այր
իւրաքանչիւր զայգի իւր եւ զթզենի
իւր, եւ արբցէ ջուր ի ջրհորոյ իւրմէ,
32 Մինչեւ եկից առից եւ տարայց զձեզ
յերկիրն որ իբրեւ զերկիրս ձեր է, եր-
կիր ցորենոյ եւ գինւոյ, այգեաց եւ
հացի, երկիր ձիթենեաց՝ իւղոյ եւ մե-
ղու . եւ կեցէք եւ ոչ մեռանիցիք . եւ
մի՛ լսէք Եզեկիայ, զի խաբէ զձեզ եւ
33 ասէ, թէ Տէր փրկեսցէ զմեզ ։ Միթէ
փրկելով փրկեցի՞ն աստուածք ազգացն
զիւրաքանչիւր աշխարհ ի ձեռաց ար-

[1] Եբր. Ասացեր, Խորհուրդ եւ զօրութիւն է իմ ի պատերազմ. բանք շրթանց եւեթ են [2] Եբրայեցին յաւելու, մեր

[3] Կամ, խաղաղութիւն, կամ հաշտութիւն

34 քային Ասորեստանեայց։ Ո՞ւր է աս-
տուածն Եմաթայ եւ Արփաթայ, եւ ո՞ւր է
աստուածն Սեփարուիմայ [1]քաղաքին,
Անայ եւ Աւայ. միթէ փրկեցի՞ն զՍամարիա
35 ի ձեռաց իմոց. Ո՞վ ոք յամենայն աս-
տուածոց աշխարհաց որ փրկեցին զեր-
կիր իւրեանց ի ձեռաց իմոց, զի փրկես-
ցէ Տէր զԵրուսաղէմ ի ձեռաց իմոց։
36 Եւ լռեցին եւ ոչ ետուն նմա պա-
տասխանի, զի պատուէր տուեալ էր
արքային թէ Մի՛ տայցէք նմա պատաս-
խանի։
37 Եւ եմուտ Եղիակիմ որդի Քեղկեայ
հազարապետ եւ Սոմնաս դպրապետ եւ
Յովաք որդի Ասափայ որ ի վերայ յի-
շատակաց՝ առ Եզեկիա, պատառեալ
զհանդերձս, եւ պատմեցին նմա զպատ-
գամս Ռափսակայ։

Գլ. ԺԹ

1 Եւ եղեւ իբրեւ լուաւ արքայ Եզեկիա,
պատառեաց զհանդերձս իւր եւ զգեցաւ
2 քուրձ, եւ եմուտ ի տուն Տեառն։ Եւ առա-
քեաց զԵղիակիմ հազարապետ եւ զՍոմ-
նաս դպրապետ, եւ զծերս ի քահանա-
յիցն քրձազգածս առ Եսայի մարգարէ
3 որդի Ամովսայ։ Եւ ասեն ցնա, Այսպէս
ասէ Եզեկիա. Օր նեղութեան եւ կշտամ-
բանաց, եւ զայրացուցանելոյ օրս այս. զի
հասեալ են մանկունք յերկունս, եւ չիք
4 զօրութիւն ի ծնանելիս։ Թերեւս լուի-
ցէ [2]Աստուած քո զպատգամս Ռափսա-
կայ, զոր առաքեաց զնա արքայն Աս-
որեստանեայց տէր իւր նախատել զԱս-
տուած կենդանի եւ հայհոյել բանիւք,
զորս լուաւ Տէր Աստուած քո. եւ ա-
ռասցես աղօթս ի վերայ մնացորդացս
5 որ մնացին։ Եւ եկին ծառայք արքային
6 Եզեկեայ առ Եսայի. Եւ ասէ ցնոսա
Եսայի, Այսպէս ասասջիք տեառն ձե-
րում, այսպէս ասէ Տէր. Մի՛ երկնչիր
յերեսաց պատգամացն զորս լուար՝ ո-
րովք հայհոյեցին զիս ծառայք արքային
7 Ասորեստանեայց։ Ահա ես տաց ի նա
այս, եւ լուիցէ զոյժ, եւ դարձցի յեր-
կիր իւր, եւ կործանեցից զնա սրով
յերկրի իւրում։
8 Եւ դարձաւ Ռափսակ եւ եգիտ զար-
քայն Ասորեստանեայց պատերազմեալ
ընդ Ղոբնայի. զի լուաւ թէ չուեաց ի
9 Լաքիսայ։ Եւ նա լուաւ զԹարակայ ար-
քայէ Եթովպացւոց, ասեն, Ահա ել պա-
տերազմել ընդ քեզ. եւ դարձաւ անդ-
րէն, եւ առաքեաց հրեշտակս առ Եզե-
10 կիա եւ ասէ, Այսպէս խօսեսջիք ընդ
Եզեկեայ արքայի Յուդայ՝ ասել, Մի՛
հպարտացուսցէ զքեզ Աստուած քո յոր
յուսացեալ ես, ասել՝ թէ ոչ մատ-
նեսցի Երուսաղէմ ի ձեռս արքային Ա-
11 սորեստանեայց։ Ահա դու քեզէն իսկ
լուար զամենայն ինչ զոր արարին թա-
գաւորք Ասորեստանեայց ընդ ամենայն
աշխարհս [3]նզովել զնոսա, եւ դու փրկի-
12 ցի՞ս։ Միթէ փրկեցի՞ն զնոսա աստուածք
ազգացն զորս ապականեցին հարք իմ,
զԳովզան եւ զԽառան եւ զՌափաթ եւ
13 զորդիս Եդեմայ [4]առ ծովեզերբ։ Ո՞ւր է
արքայն Եմաթայ եւ արքայն Արփաթայ,
եւ արքայ քաղաքին Սեփարուիմայ,
Անայ եւ Աւայ։
14 Եւ առ Եզեկիա զհրովարտակն ի ձե-
ռաց հրեշտակացն, եւ ընթերցաւ զնո-
սա. եւ ել ի տունն Տեառն, եւ տարա-
ծեաց զնոսա Եզեկիա առաջի Տեառն։
15 Եւ եկաց յաղօթս Եզեկիա առաջի Տեառն
եւ ասէ, Տէր Աստուած Իսրայելի որ
նստիս ի քերովբէս, դու ես միայն Աս-
տուած յամենայն թագաւորութիւնս
երկրի, դու արարեր զերկինս եւ զեր-
16 կիր։ Խոնարհեցո, Տէր, զունկն քո եւ
լուր, բաց, Տէր, զաչս քո եւ տես, եւ
լուր զբանս Սենեքերիմայ զոր առա-
քեաց նախատել զԱստուած կենդանի։
17 Զի արդարեւ, Տէր, աւերեցին թագա-
ւորք Ասորեստանեայց զազգս եւ զեր-
18 կիր նոցա. Եւ ետուն զաստուածս նո-
ցա հրոյ, զի չէին աստուածք, այլ գործք
ձեռաց մարդկան, փայտ եւ քար. եւ
19 կորուսին զնոսա։ Եւ արդ, Տէր Աս-
տուած մեր, փրկեա զմեզ ի ձեռաց նո-
րա. եւ ծանիցեն ամենայն թագաւո-
րութիւնք երկրի, զի դու ես Տէր Աս-
տուած միայն։
20 Եւ առաքեաց Եսայի որդի Ամովսայ
առ Եզեկիա եւ ասէ, Այսպէս ասէ Տէր
[1]զօրութեանց՝ Աստուած Իսրայելի.
զոր կայեր յաղօթս առ իս վասն Սե-
նեքերիմայ արքայի Ասորեստանեայց՝
21 լուայ։ Այս բան է զոր խօսեցաւ Տէր
վասն նորա. Արհամարհեաց, անգոս-
նեաց զքեզ կոյս դուստր Սիոնի.
զլուխ շարժեաց ի վերայ քո, դուստր

[1] Յօրին. զոմաւէ [2] Ոմն. Տէր Աստուած
[3] Այսինքն, կորուսանել [4] Ոմն. ի Թեղասար

22 Երուսաղեմի։ Զո՞ նախատեցեր եւ հայ-
հոյեցեր, եւ յո՞յր վերայ բարձրացու-
ցեր զբարբառ քո նախատել. եւ ամ-
բարձեր ի բարձունս զաչս քո ի Սուրբն
23 Իսրայելի։ Ի ձեռն հրեշտակաց քոց նա-
խատեցեր զՏէր եւ ասացեր, Բազմու-
թեամբ կառաց իմոց ելի ի բարձրու-
թիւն լերանց ի կողմն Լիբանանու, եւ
կոտորեցի զմեծութիւն եղեւնափայտից
նորա եւ զընտիր ընտիր նոճից նորա,
եւ հասի յեզր ապառաժոյ անտառին
24 Կարմեղայ։ Ես [1]պահեցի եւ արբի զջուրս
օտարոտիս եւ [2]աւերեցի թաթիւ ոտին
25 իմոյ զամենայն գետս [3]ամրափակս։ Մի-
թէ չլուե՞ր լուեալ ի հնաւուրց զայդ զոր
արարի յաւուրց առաջնոց. ստեղծի զդա
եւ ածի հասուցի, [4]եւ եղեն ի հպար-
տութիւն գերեվարաց պատերազմողաց
26 քաղաքք ամուրք"։ Բնակեալք ի նոսա
տկարացան ձեռամբ եւ զարհուրեցան,
եւ ամաչեցին եւ եղեն իբրեւ զխոտ
վայրի, եւ իբրեւ զդալարի բանջարոյ
եւ զդալարի տանեաց, [5]եւ կոխան ա-
27 ռաջի հասելոցն"։ Արդ զնիստ քո եւ զել
եւ զմուտ քո գիտեմ, եւ զպատմառու-
28 թիւն [6]քո. Ի բարկանալ քո ինձ, եւ խայ-
տալդ քո ել յականջս իմ. եւ արկից
կարթ ի քիթս քո, եւ զանդամանդ ի
կզակս քո, եւ դարձուցից զքեզ ընդ
ճանապարհ ընդ որ եկիր։
29 Եւ քեզ այս նշանակ լիցի. կերիցես
այս ամ զինքնեակս, եւ յամին երկրորդի
զինքնեկաց ինքնեակս. եւ յամին երրոր-
դի՝ [7]սերմանք եւ հունձք եւ տունկք
այգեաց", եւ կերիջիք զպտուղ նոցա։
30 Եւ յաւելցի ապրեալ տանդ Յուդայ.
մնացեալն արձակեսցէ արմատս ի խո-
31 նարհ եւ պտուղս ի վեր։ Զի յԵրուսա-
ղեմէ ելցէ մնացորդ, եւ ի Սիոնէ լեա-
նէ ապրեալ. նախանձ Տեառն զօրու-
թեանց արասցէ զայս։
32 Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր. Ար-
քայն Ասորեստանեայց մի՛ մտցէ ի քա-
ղաքդ յայդ, եւ մի՛ ձգեսցէ ի դա նետս,
եւ մի՛ պատեսցէ զդա վահանօք, եւ մի՛
33 կուտեսցէ զդովաւ հող. Ընդ ճանա-
պարհ ընդ որ եկն՝ ընդ նոյն դարձցի,
եւ ի քաղաքդ յայդ մի՛ մտցէ, ասէ Տէր։
34 Եւ վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ
փրկել զդա վասն իմ եւ վասն Դաւթի
ծառայի իմոյ։
35 Եւ ի հասանել գիշերոյն ել հրեշտակ
Տեառն, եւ եհար ի բանակէն Ասորես-
տանեայց հարիւր եւ ութսուն եւ հինգ
հազար. եւ կանխեցին ընդ առաւօտն,
եւ ահա ամենայն մարմինք մեռեալ։
36 Եւ չուեաց գնաց, եւ դարձաւ Սենե-
քերիմ արքայ Ասորեստանեայց եւ բնա-
37 կեաց ի Նինուէ։ Եւ եղեւ մինչդեռ երկիր
պագանէր ի տան Նեսրաքայ աստուածոյ
իւրում, Ադրամելէք եւ Սարասար որդիք
նորա հարին զնա սրով, եւ ինքեանք
զերծան յերկիրն Արարատայ. եւ թագա-
ւորեաց Ասորդան որդի նորա ընդ նորա։

Գլ. Ի

1 Յաւուրսն յայնոսիկ հիւանդացաւ Եզե-
կիա ի մահ. եւ եմուտ առ նա Եսայի
որդի Ամովսայ մարգարէ, եւ ասէ ցնա,
Այսպէս ասէ Տէր. Հրաման տուր վասն
տան քում, զի մեռանիս դու եւ ոչ ապ-
2 րեսցիս։ Եւ դարձոյց Եզեկիա զերեսս
իւր յորմն, եւ եկաց յաղօթս առ Տէր
3 եւ ասէ, Ո՛վ Տէր, յիշեա որպէս գնա-
ցի առաջի քո ճշմարտութեամբ եւ կա-
տարեալ սրտիւ, եւ զբարին առաջի քո
արարի։ Եւ ելաց Եզեկիա լալիւն մեծ։
4 Եւ էր Եսայի ի սրահին միջնում. եւ
5 բան Տեառն եղեւ առ նա եւ ասէ, Դար-
ձիր անդրէն, եւ ասասցես ցԵզեկիա ցա-
ռաջնորդ ժողովրդեան իմոյ, Այսպէս
ասէ Տէր Աստուած Դաւթի հօր քո.
Լուայ աղօթից քոց եւ տեսի զարտա-
սուս քո. ահա ես բժշկեցից զքեզ, եւ
յաւուրն երրորդի ելցես ի տուն Տեառն.
6 Եւ յաւելից յաւուրս քո ամս հնգետա-
սան, եւ ի ձեռաց արքային Ասորեստա-
նեայց փրկեցից զքեզ եւ զքաղաքդ զայդ,
եւ վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ
վասն իմ եւ վասն Դաւթի ծառայի ի-
7 մոյ։ Եւ ասէ Եսայի, [8]Առցեն պաղա-
տիտս թզոյ. եւ առաւ. եւ դիցեն ի վե-
րայ վիրիդ եւ ողջասցի"։
8 Եւ ասէ Եզեկիա ցԵսայի, Զի՞նչ նշան
է թէ բժշկեսցէ զիս Տէր, եւ ելանիցեմ
9 ի տուն Տեառն յաւուրն երրորդի։ Եւ
ասէ Եսայի, Այս նշան է ի Տեառնէ զի

[1] Եբր. փորեցի [2] Եբր. ցամաքեցուցի [3] Եբր. ամրացելոյ, կամ, Եգիպտոսի [4] Եբր. զի դարձուցես յաւերակութիւն, ի կոյտս աւերակաց զքաղաքս ամրացեալս [5] Եբր. հարեալ ի խորշակէ մինչչեւ հասեալ [6] Եբր. քո առ իս
[7] Եբր. սերմանեցէք և հնձեցէք և տնկեցէք այգիս

[8] Եբր. Առէք պաղատիտս թզոյ. եւ առին, եւ եդին ի վերայ վիրին եւ ողջացաւ

արասցէ Տէր զբանն զոր խօսեցաւ. Եր-
10 թիցէ ստուերն զտասն աստիճանօք[1]։ Եւ
ասէ Եզեկիա, Դիւրին է ստուերին [2]զտա-
նալ զտասն աստիճանօք. եւ ասէ, Ոչ
այդպէս է. այլ դարձցի ստուերն զտասն
11 աստիճանօք անդրէն յետս։ Եւ աղաղա-
կեաց Եսայի մարգարէ առ Տէր, եւ դար-
ձաւ ստուերն զտասնեքումբք աստիճա-
նօք անդրէն յետս, զտասնեքումբք աս-
տիճանօքն Աքազու։
12 Ի ժամանակին յայնմիկ առաքեաց Մա-
րոդաք Բաղդան որդի Բաղդանայ ար-
քայ Բաբելոնի հրովարտակս եւ պատա-
րագս առ Եզեկիա, զի լուաւ թէ հի-
13 ւանդացաւ Եզեկիա։ Եւ ուրախ եղեւ
ի նոսա Եզեկիա, եւ եցոյց նոցա [3]զա-
մենայն տունս Նեքովթայ”, զարծաթ
եւ զոսկի եւ զխունկս եւ զիւղս անու-
շունս, եւ զտունս անօթոց, եւ որ ինչ
գտանէր ի գանձս նորա. եւ ոչ էր տեղի
զոր ոչ եցոյց նոցա Եզեկիա ի տան իւրում
եւ յամենայն իշխանութեան իւրում։
14 Եւ եմուտ Եսայի մարգարէ առ Եզե-
կիա արքայ եւ ասէ ցնա, Զի՞նչ խօսե-
ցան արքդ այդոքիկ, եւ ուստի՞ եկին
առ քեզ. եւ ասէ Եզեկիա, Յերկրէ հե-
15 ռաստանէ եկին առ իս ի Բաբելոնէ։ Եւ
ասէ, Զի՞նչ տեսին ի տան քում. եւ
ասէ Եզեկիա, Զամենայն ինչ որ ի տան
իմում էր՝ տեսին, եւ ոչ ինչ էր ի տան
իմում զոր ոչ ցուցի նոցա, այլ եւ ոչ ի
16 գանձս իմ։ Եւ ասէ Եսայի ցԵզեկիա,
17 Լուր զբան Տեառն. Ահա աւուրք գան,
եւ առցի ամենայն որ ինչ ի տան քում է,
եւ զոր ինչ գանձեցին հարք քո մինչեւ
ցայսօր, եւ երթիցէ ի Բաբելոն, եւ մի՛
ինչ [4]մնասցէ. զի բան է զոր խօսեցաւ
18 Տէր”. Եւ [5]որդիք քո” որ ելանիցեն ի
քէն՝ առցին, եւ եղիցին ներքինիք ի
19 տան արքային Բաբելացւոց։ Եւ ասէ
Եզեկիա ցԵսայի, Բարի է բանն Տեառն
զոր խօսեցաւ. եւ ասէ, [6]Եղիցի խաղա-
ղութիւն եւ ճշմարտութիւն յաւուրս իմ։
20 Եւ մնացորդք բանից Եզեկեայ եւ ամե-
նայն զօրութիւնք նորա, եւ ո՛րպէս ա-
րար [7]զջրարուզխան եւ զջրմուղն. եւ ած
ջուր ի քաղաքն, ո՞չ ահանիկ գրեալ են
ի գիրս բանից աւուրց թագաւորացն
21 Յուդայ։ Եւ ննջեաց Եզեկիա ընդ հարս
իւր, եւ թագաւորեաց Մանասէ որդի
նորա ընդ նորա։

## ԳԼ. ԻԱ

1 Որդի երկոտասանից ամաց Մանասէ ի
թագաւորել իւրում, եւ յիսուն եւ [8]ինն
ամ թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ ա-
2 նուն մօր նորա Եփսիբա։ Եւ արար չար
առաջի Տեառն ըստ գարշութեան ազ-
գացն, զորս եբարձ Տէր յերեսաց որդ-
3 ւոցն Իսրայելի։ Եւ դարձաւ շինեաց
զբարձունսն զոր կործանեաց Եզեկիա
հայր նորա, եւ կանգնեաց [9]զսեղանն
Բահաղու, եւ արար [10]անտառ՝ որպէս
արար Աքաաբ արքայ Իսրայելի. եւ եր-
կիր եպագ ամենայն զօրութեան երկ-
4 նից եւ ծառայեաց նոցա. Եւ շինեաց
սեղանս ի տան Տեառն, [11]որպէս ասաց
Տէր, յԵրուսաղէմ եդից [12]զաթոռ իմ։
5 Եւ շինեաց սեղանս ամենայն զօրու-
թեան երկնից [13]յամենայն սրահս” տանն
6 Տեառն։ Եւ անցոյց [14]զորդիս իւր ընդ
հուր, եւ հմայէր եւ հաւահարց լինէր.
եւ արար վհուկս եւ գէտս. եւ յաճա-
խեաց առնել չար առաջի Տեառն առ ի
7 բարկացուցանելոյ զնա։ Եւ եդ [15]զդրօ-
շեալս անտառայ ի տան Տեառն”, զոր-
մէ ասաց Տէր ցԴաւիթ եւ ցՍողոմոն
որդի նորա, թէ Ի տանս յայսմիկ եւ յԵ-
րուսաղէմ զոր ընտրեցի յամենայն ցե-
ղիցն Իսրայելի՝ եդից զանուն իմ յաւի-
8 տեան, Եւ ոչ յաւելից շարժել զոտն Իս-
րայելի յերկրէդ զոր ետու հարց նոցա,
[16]որք զգուշանայցեն առնել զամենայն
որ ինչ պատուիրեցի նոցա ըստ ամենայն
պատուիրանին զոր պատուիրեաց նոցա
9 ծառայ իմ Մովսէս։ Եւ ոչ լուան. եւ
մոլորեցոյց զնոսա Մանասէ առնել չար
[17]առաջի Տեառն” առաւել քան զազգսն
զորս ապականեաց Տէր յերեսաց որդ-
ւոցն Իսրայելի։
10 Եւ խօսեցաւ Տէր ի ձեռն ծառայից
11 իւրոց մարգարէից՝ եւ ասէ, Փոխանակ
զի արար Մանասէ արքայ Յուդայ զգար-
շելիս զայսոսիկ, չարս առաւել քան
զամենայն զոր արար Ամովրհացին ա-

---

[1] Եբրայեցին յաւելու, կամ դարձցի զտասն աստի-
ճանօք [2] Եբր. իջանել [3] Եբր. զամենայն
տուն իւր զցանկալի [4] Եբր. մնասցէ, ասէ
Տէր [5] Եբր. յորդւոց քոց [6] Եբր. Ո՞չ ապա-
քէն եղիցի [7] Եբր. զաւազանն

[8] Եբր. հինգ [9] Եբր. սեղանս [10] Եբր. Աշերա,
(Նկ. ԼԴ. 13։) [11] Եբր. զորմէ [12] Եբր.
զանուն [13] Եբր. յերկոսին գաւիթս [14] Եբր.
զորդի [15] Եբր. զդրօշեալն Աշերայ զոր արար
ի տանն [16] Եբր. եթէ միայն [17] Յեբր. պակասէ

առաջի իմ, եւ [1]յանցուցանէ զՅուդա կռովք
12 իւրեանց", Վասն այնորիկ այսպէս ասէ
Տէր Աստուած Իսրայէլի. Ահա ես ածեմ
չարիս ի վերայ Երուսաղեմի եւ ի վերայ
Յուդայ, զի ամենայնք որ լսիցեն հնչես-
13 ցեն երկոքին ականջք իւր։ Եւ ձգեցից
ի վերայ Երուսաղեմի զչափն Սամարիայ
եւ զկշիռ տանն Աքաաբու, եւ ջնջեցից
զԵրուսաղէմ որպէս ջինջ մի [2]ջնջելով որ
կործանիցի" ի վերայ երեսաց իւրոց։
14 Եւ մերժեցից զմնացորդս ժառանգու-
թեան իմոյ, եւ մատնեցից զնոսա ի ձեռս
թշնամեաց իւրեանց, եւ եղիցին ի յափշ-
տակութիւն եւ յաւար ամենայն թշնա-
15 մեաց իւրեանց. Փոխանակ զի արարին
չար առաջի իմ, եւ բարկացուցանէին
զիս յօրէ յորմէհետէ հանի զնոսա յԵ-
16 գիպտոսէ մինչեւ ցայսօր։ Նա եւ արիւն
անպարտ եհեղ Մանասէ բազում յոյժ,
մինչեւ ելից զԵրուսաղէմ ծայր ի ծայր.
թող զմեղս իւր որովք մեղոյցն զՅու-
դա առնել չար առաջի Տեառն։
17 Եւ մնացորդք բանից Մանասէի եւ
ամենայն ինչ զոր արար եւ մեղք նորա
զոր մեղաւ, ո՞չ ահաւասիկ գրեալ են ի
գիրս բանից աւուրց թագաւորացն Յու-
18 դայ։ Եւ ննջեաց Մանասէ ընդ հարս
իւր, եւ թաղեցաւ ի պարտիզի տան
իւրոյ, ի պարտիզին Ոզիայ. եւ թագա-
ւորեաց Ամոն որդի նորա ընդ նորա։
19 Որդի քսան եւ երկուց ամաց Ամոն
ի թագաւորել իւրում, եւ [3]երկուս ա-
մս" թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ ա-
նուն մօր նորա Մեսողամիթ՝ դուստր Ա-
20 րուսայ Յետեբադայ։ Եւ արար չար ա-
ռաջի Տեառն, որպէս արար Մանասէ
21 հայր նորա. Եւ գնաց յամենայն ճանա-
պարհս յոր գնաց հայր նորա, եւ պաշ-
տեաց զկուռս զոր պաշտեաց հայր նո-
22 րա, եւ երկիր եպագ նոցա. Եւ եթող
զՏէր Աստուած հարց իւրոց, եւ ոչ գնաց
ի ճանապարհս Տեառն։
23 Եւ դաւամարեցան ծառայք Ամոնայ ի
վերայ նորա, եւ սպանին զարքայ ի տան
24 իւրում։ Եւ եհար ամենայն ժողովուրդն
զամենայն դաւամարեալսն ի վերայ ար-
քային Ամոնայ, եւ թագաւորեցոյց ժո-
ղովուրդ երկրին զՅովսիա որդի նորա
ընդ նորա։

[1] Ոմք. յանցոյց զՅուդա կռովք իւրովք [2] Ոմք. զոր ջնջիցէ ոք եւ դարձուցէ [3] Ոմք. զերկուս ամս

25 Եւ մնացորդք բանից Ամոնայ զոր ա-
րար, ո՞չ ահաւասիկ գրեալ են ի գիրս բա-
26 նից աւուրց թագաւորացն Յուդայ։ [4]Եւ
ննջեաց Ամոն ընդ հարս իւր," եւ թա-
ղեցին զնա ի գերեզմանի իւրում ի պար-
տիզին Ոզիայ. եւ թագաւորեաց Յով-
սիա որդի նորա ընդ նորա։

## ԳԼ. ԻԲ

1 Որդի ամաց ութից Յովսիա ի թագա-
ւորել իւրում, եւ երեսուն եւ մի ամ
թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ անուն
մօր նորա Յեդիդա, դուստր Ադայեայ ի
2 Բասուրաթայ։ Եւ արար ուղղութիւն
առաջի Տեառն, եւ գնաց յամենայն ճա-
նապարհս Դաւթի հօր իւրոյ, եւ ոչ խո-
տորեցաւ յաջ կամ յահեակ։
3 Եւ եղեւ յամի ութուտասներորդի
Յովսեայ արքայի [4]Յուդայ, յամսեանն
ութներորդի" առաքեաց արքայ զՍա-
փան զորդի Եսելեայ որդւոյ Մեսողամայ
4 զդպրապետ տանն, եւ ասէ, Երթ առ
Քեղկիա քահանայ մեծ, զի [5]ձուլեսցէ
զարծաթն մտեալ ի տուն Տեառն, զոր
ժողովեցին պահապանքն [6]կշռոյ ի ժո-
5 ղովրդենէն. Եւ տացեն զայն ի ձեռս
գործաւորաց գործոյն՝ ցվերակացուս
տանն Տեառն. եւ եսուն ցգործաւորս
գործոյն ի տան Տեառն, զօրացուցանել
6 [7]զբեկեալ տանն Տեառն, Ցհիւսունս եւ
ցշինողս եւ ցճարտարս, գնել փայտ եւ
քարինս կոփածոյս՝ առ ի կազմելոյ [8]զբե-
7 կեալ տանն Տեառն": բայց ոչ առնէին
համար արծաթոյն տուելոյ նոցա, քան-
8 զի յաւատ գործէին։ Եւ ասէ Քեղկիա
քահանայ մեծ ցՍափան դպրապետ, Մա-
տեան օրինաց գտի ի տան Տեառն. եւ
ետ Քեղկիա ցՍափան. եւ ընթերցա
9 զայն։ Եւ [9]տարաւ առ արքայ դպրա-
պետն", եւ ասէ, [10]Ձուլեցին ծառայք քո
զարծաթն գտեալ ի տան Տեառն, եւ ե-
տուն զայն ի ձեռս գործաւորաց գոր-
10 ծոյն վերակացուաց ի տան Տեառն։ Եւ
խօսեցաւ Սափան դպրապետ ընդ ար-
քային եւ ասէ, Մատեան մի ետ ցիս
Քեղկիա քահանայ. եւ ընթերցաւ զայն
11 Սափան առաջի արքային։ Եւ եղեւ իբ-

[4] Ոմք. դ–կ–ե [5] Ոմք. համարեսցի [6] Ոմք. դրանն [7] Նշանակն՝ խրամատ [8] Ոմք. զտունն [9] Ոմք. եկն Սափան դպրապետ առ արքայ, եւ պատմեաց արքային զբանն [10] Ոմք. Հանին

*րեւ լուաւ արքայ զբանս մատենի օրի-*
12 *նացն, պատառեաց զհանդերձս իւր։ Եւ*
*պատուէր ետ արքայ Քեղկեայ քահա-*
*նայի, եւ Աքիկամայ որդւոյ Սափանայ*
*եւ Աքոբորայ որդւոյ Միքէի եւ Սափա-*
*նայ դպրապետի եւ Յասայեայ ծառայի*
13 *արքայի, եւ ասէ, Երթայք խնդրեցէք*
*ի Տեառնէ վասն իմ եւ վասն ամենայն*
*ժողովրդեանդ եւ վասն ամենայն Յու-*
*դայ, վասն բանից մատենիդ գտելոյ այ-*
*գորիկ. զի մեծ բարկութիւն Տեառն*
*բորբոքեալ է ի մեզ. փոխանակ զի ոչ*
*լուան հարք մեր բանից մատենիդ այդո-*
*րիկ առնել ըստ ամենայն գրելոցդ զմէնջ։*
14 *Եւ գնաց Քեղկիա քահանայ եւ Աքի-*
*կամ եւ Աքոբովր եւ Սափան եւ Յա-*
*սայիա՝ առ Ողդա մարգարէ՝ կին Սեղ-*
*ղովմայ որդւոյ Թեկուայ, որդւոյ Արա-*
*սայ պատմուճանի. եւ նա բնակէր յԵ-*
*րուսաղէմ ի Մասենա. եւ խօսեցան ընդ*
15 *նմա։ Եւ ասէ ցնոսա, Այսպէս ասէ Տէր*
*Աստուած Իսրայելի. Ասացէք ցայրն որ*
16 *առաքեաց զձեզ առ իս, Այսպէս ասէ*
*Տէր. Ահա ածեմ չարիս ի վերայ տեղ-*
*ւոյդ այդորիկ եւ ի վերայ բնակչաց դո-*
*րա ըստ ամենայն բանից մատենին զոր*
17 *ընթերցաւ արքայ Յուդայ. Փոխանակ*
*զի թողին զիս, եւ արկանէին խունկս*
*աստուածոց օտարաց, զի բարկացուս-*
*ցեն զիս [1]գործովք ձեռաց իւրեանց, եւ*
*բորբոքեսցի սրտմտութիւն իմ ի տեղւոջդ*
18 *յայդմիկ, եւ մի՛ շիջցի։ Եւ ցարքայ Յու-*
*դայ որ առաքեաց զձեզ խնդրել զՏէր՝*
*զայս ասասջիք. Այսպէս ասէ Տէր Աս-*
*տուած Իսրայելի. [2]Բանքն զոր լուար՝*
19 *այս են.” Փոխանակ զի կակղացաւ սիրտ*
*քո, եւ պատկառեցեր յերեսաց Տեառն*
*իբրեւ լուար զոր ինչ խօսեցաւ ի վե-*
*րայ տեղւոյդ այդորիկ եւ ի վերայ բնակ-*
*չաց դորա լինել յապականութիւն եւ*
*յանէծս, եւ պատառեցեր զհանդերձս*
*քո, եւ լացեր առաջի իմ. եւ ես լուայ,*
20 *ասէ Տէր։ Վասն այդորիկ ես յաւելում*
*զքեզ առ հարս քո, եւ ժողովեսցիս [3]ի*
*տեղւոջ քում յԵրուսաղէմ”. եւ ոչ տես-*
*ցեն աչք քո զամենայն չարիսն զոր ես*
*ածից ի վերայ տեղւոյդ այդորիկ։*

[1] Եբր. ամենայն գործովք [2] Եբր. Վասն բանիցն զոր լուար։ [3] Եբր. ի գերեզմանի քում ի խաղաղութիւն

ԳԼ. ԻԳ

1 *Եւ գարձուցին արքայի [4]զպատգամն*
*զոր յղեաց արքայ. եւ ժողովեաց առ*
*ինքն” զամենայն ծերս Յուդայ եւ զԵ-*
2 *րուսաղեմի։ Եւ ել արքայ ի տուն Տեառն,*
*եւ ամենայն այր Յուդայ եւ ամենայն*
*բնակիչք Երուսաղեմի ընդ նմա, եւ քա-*
*հանայք եւ մարգարէք եւ ամենայն ժո-*
*ղովուրդն ընդ նմա ի փոքուէ մինչեւ*
*ցմեծ. եւ ընթերցաւ յականջս նոցա զա-*
*մենայն բանս մատենի ուխտին գտելոյ*
3 *ի տան Տեառն։ Եւ եկաց արքայ [5]ի վե-*
*րայ սեանն, եւ ուխտեաց ուխտ առա-*
*ջի Տեառն երթալոյ զհետ Տեառն, եւ*
*պահելոյ զպատուիրանս նորա եւ զվկա-*
*յութիւնս նորա եւ զիրաւունս նորա յա-*
*մենայն սրտէ եւ յամենայն անձնէ, կանգ-*
*նել զբանս ուխտին գրելոյ ի մատենին*
*յայնմիկ. եւ եկաց ամենայն ժողովուրդն*
4 *յուխտի։ Եւ պատուէր ետ արքայ Քեղ-*
*կեայ քահանայի մեծի եւ քահանայիցն*
*երկրորդաց եւ պահապանաց [6]կչռոյն՝*
*հանել ի տաճարէն Տեառն զամենայն ա-*
*նօթ գործեալ Բահաղու եւ [7]անտառայն*
*եւ զօրութեան երկնից. եւ այրեաց զնո-*
*սա արտաքոյ Երուսաղեմի ի [8]Սադեմովթ*
*Կեդրոնի, եւ արկ զմոխիր նոցա ի Բե-*
5 *թէլ։ Եւ [9]այրեաց զքումարիմսն” զոր*
*տուեալ էր արքայից Յուդայ. եւ ար-*
*կանէին խունկս ի բարձունսն եւ յամե-*
*նայն քաղաքս Յուդայ եւ շուրջ զԵրու-*
*սաղեմաւ, եւ զխնկարկուսն [10]զարեգա-*
*կան եւ զլուսնի եւ զաստեղաց եւ զամե-*
6 *նայն զօրութեան երկնից։ Եւ [11]զանտառն*
*ի տանէ Տեառն արտաքոյ Երուսաղեմի*
*ի հեղեղատն Կեդրոնի. եւ այրեաց զայն*
*ի հեղեղատին Կեդրոնի, եւ մանրեաց*
*իբրեւ զփոշի, եւ ցանեաց զմոխիրն նո-*
*րա ի գերեզմանս որդւոց ժողովրդեանն։*
7 *Եւ քակեաց զտուն [12]կադեսիմացն որ ի*
*տան Տեառն. յորում կանայքն անկա-*
8 *նէին [13]զպատմուճանս անտառացն”։ Եւ*
*եհան զամենայն քուրմսն ի քաղաքացն*
*Յուդայ, եւ պղծեաց զբարձունսն յոր*
*արկանէին խունկս քուրմքն, ի Գաբաայ*

[4] Եբր. զպատգամն։ Եւ յղեաց արքայ, եւ ժողովեցին առ նա [5] Կամ, առ [6] Եբր. սեմոց, կամ, դրանն [7] Եբր. Աշերայ [8] Նշանակէ՝ Հովիտ [9] Եբր. եբարձ զքումարսն [10] Եբր. Բահաղու, զարեգական [11] Եբր. եհան զԱշերա [12] Նշանակէ՝ նուիրելոց (Տես. Գ Թագ. ԺԴ. 24: ԺԵ. 12:) [13] Եբր. զտունս, այսինքն՝ զվարագոյրս Աշերայ

մինչեւ ցԲերսաբէէ. եւ քակեաց [1]զտունն
դրանցն որ առ դրանցաւն դրանն Յեսու-
այ իշխանի [2]դրանն ի ձախմէ առ դրան
9 քաղաքին։ Բայց ոչ ելանէին քուրմք
բարձանցն ի սեղան Տեառն որ յԵրու-
սաղէմ. [3]եթէ ոչ՝ ուտէին բաղարջ ի մէջ
10 եղբարց իւրեանց. Եւ պղծեաց զՏա-
փեթ, որ ի ձոր որդւոցն Ենովմայ, առ
ի չածելոյ առն զուստր իւր կամ զդուստր
11 զբոցով Մեղքոմայ։ Եւ [4]այրեցին զձիսն
զորս [5]ետ արքայն՝ Յուդայ արեգական
ի մուտս տանն Տեառն [6]ի գանձանակի
Նաթանայ ներքինւոյ արքային՝ որ ի Փա-
րուրիմ. եւ զկառսն արեգական այրեաց
12 հրով։ Եւ զսեղանս որ ի վերայ տանեաց
[7]վերնատանն, զոր արարին թագաւորք
Յուդայ, եւ զսեղանս զոր արար Մա-
նասէ յերկուս [8]սրահս տանն Տեառն,
քակեաց զայն արքայ եւ կործանեաց
անտի, եւ ընկէց զհողն նոցա ի հեղե-
13 ղատն Կեդրոնի։ Նա եւ [9]զտունն որ ի
դիմաց Երուսաղեմի ընդ աջմէ լերինն
[10]Մոսաթայ, զոր շինեաց Սողոմոն ար-
քայ Իսրայելի Աստարովթայ գարշելեաց
Սիդոնացւոց, եւ Քամովսայ զազրա-
ւոյ Մովաբու, եւ Մեղքոմայ գարշե-
լոյ որդւոցն Ամոնայ, պղծեաց արքայ.
14 Եւ խորտակեաց զարձանսն, եւ կոտո-
րեաց [11]զանտառսն, եւ ելից զտեղիսն նո-
ցա ոսկերօք մարդկան։
15 Եւ զսեղանն որ [12]ի Բեթէլ զբարձր՝,
զոր արար Յերոբովամ որդի Նաբատայ
որ մեղոյցն զԻսրայէլ, եւ զայն եւս
[13]սեղան զբարձր կործանեաց եւ խոր-
տակեաց զքարինս նորա՝, եւ մանրեաց
իբրեւ զփոշի, եւ այրեաց զանտառն։
16 Եւ հայեցաւ Յովսիա եւ ետես զգերեզ-
մանսն որ [14]ի քաղաքին, եւ առաքեաց
եւ առ զոսկերս ի գերեզմանացն եւ
այրեաց ի վերայ սեղանոյն, եւ պղծեաց
զնա ըստ բանին Տեառն, զոր խօսեցաւ
այրն Աստուծոյ [15]մինչեւ կայր Յերոբո-
վամ ի տօնին ի վերայ սեղանոյն։ Եւ

[1]Եբր. զբարձունս [2]Եբր. քաղաքին [3]Եբր. սակայն [4]Եբր. եբարձ [5]Եբր. տուեալ էր արքայից [6]Եբր. առ սենեկին Նաթանմելեքայ ներքինւոյ [7]Եբր. վերնատանն Աքազու [8]Եբր. գաւիթս [9]Եբր. զբարձունսն [10]Նշանակէ՝ Ապականութիւն [11]Աշերան, Աշերայ (Ելից ԼԴ. 13։) [12]Եբր. ի Բեթէլ. զբարձունսն [13]Եբր. սեղան եւ զբարձունսն կործանեաց, եւ այրեաց զբարձունսն [14]Եբր. ի լերինն [15]Յեբր. պակասէ

զարձոյց զաչս իւր ի գերեզման առնն
Աստուծոյ՝ որ խօսեցաւ զբանս զայսո-
17 սիկ, Եւ ասէ, Զի՞նչ է կոթողն այն զոր
ես տեսանեմ. եւ ասեն ցնա արք քա-
ղաքին, [16]Այրն Աստուծոյ է՝ որ եկն ի
Յուդայ, եւ բարբառեցաւ զբանս [17]զայ-
18 սոսիկ ի վերայ սեղանոյն Բեթելայ։ Եւ
ասէ, Թոյլ տուք զայն, մի ոք շար-
ժեսցէ զոսկերս նորա. եւ [18]զերծան ոս-
կերք՝ նորա ընդ ոսկերս մարգարէին ե-
19 կելոյ ի Սամարիայ։ Նա եւ զամենայն
տունս բարձանց զոր ի քաղաքս Սա-
մարիայ արարին թագաւորք Իսրայելի
առ ի բարկացուցանելոյ զՏէր՝ մերժեաց
Յովսիա արքայ Իսրայելի. եւ արար ըստ
ամենայն գործոյն զոր արար ի Բեթէլ։
20 Եւ ձենձերեաց զամենայն քուրմս բար-
ձանց, որ էին անդ, ի վերայ սեղա-
նոյն, եւ այրեաց զոսկերս մարդկան ի
վերայ նոցա. եւ դարձաւ յԵրուսաղէմ։
21 Եւ պատուէր ետ արքայ ամենայն
ժողովրդեանն եւ ասէ, Արարէք զպասեք
Տեառն Աստուծոյ ձերում, որպէս եւ
գրեալ է ի մատենի ուխտիս այսորիկ։
22 Զի ոչ եղեւ զատիկն այն յաւուրց դա-
տաւորացն որ դատէին զԻսրայէլ, եւ
յաւուրս թագաւորացն Իսրայելի եւ թա-
23 գաւորացն Յուդայ։ Բայց ի յութու-
տասներորդի ամի արքայի Յովսեայ ե-
ղեւ զատիկն այն Տեառն յԵրուսաղէմ։
24 Եւ զվհուկս եւ զգէտս եւ զթերա-
փիմս եւ զկուռսն եւ զամենայն զար-
շելիսն եղեալս ի Յուդա եւ յԵրուսա-
ղէմ՝ եբարձ Յովսիա. զի հաստատեսցէ
զբանս օրինացն գրելոց ի մատենին,
զոր եգիտ Քեղկիա քահանայ ի տան
25 Տեառն։ Նման նմա ոչ եղեւ յառաջ քան
զնա թագաւոր, որ դարձաւ առ Տէր
յամենայն սրտէ իւրմէ եւ յամենայն
անձնէ իւրմէ եւ յամենայն զօրութենէ
իւրմէ, ըստ ամենայն օրինացն Մովսիսի.
26 եւ յետ նորա ոչ եկաց նման նմա։ Սա-
կայն ոչ դարձաւ Տէր ի սրտմտութենէ
բարկութեան իւրոյ մեծէ զոր սրտմտե-
ցաւ բարկութեամբ իւրով ի վերայ Յու-
դայ վասն զայրացութեանցն որովք զայ-
27 րացոյց զնա Մանասէ։ Եւ ասէ Տէր,
Նա եւ զՅուդա մերժեցից յերեսաց իմոց,
որպէս մերժեցի զԻսրայէլ. եւ մերժեցից

[16]Եբր. Գերեզման է առնն Աստուծոյ [17]Եբր. զայսոսիկ զոր դուք առնես [18]Եբր. թողին զոսկերս

զքաղաքդ զայդ զոր ընտրեցի զԵրուսա-
ղէմ, եւ զտունդ զորմէ ասացի թէ Ե-
ղիցի անուն իմ անդ։
28 Եւ մնացորդք բանիցն Յովսեայ եւ
ամենայն ինչ զոր արար, ո՞չ ահաւասիկ
գրեալ են ի գիրս բանից աւուրց թագա-
29 ւորացն Յուդայ։ [1]Յաւուրսն յայնոսիկ"
ել Փարաւոն Նեքաւով արքայ Եգիպ-
տացւոց ի վերայ արքային Ասորեստան-
եայց առ Եփրատ գետով. եւ գնաց Յով-
սիա արքայ ընդ առաջ նորա. եւ սպան
զնա ի Մակեդով ի տեսանելն նորա զնա։
30 Եւ բարձին [2]զնա ծառայք նորա ի Մա-
կեդովայ, եւ բերին զնա յԵրուսաղէմ,
եւ թաղեցին զնա ի գերեզմանի իւրում.
եւ առ ժողովուրդ երկրին զՅովաքազ
որդի Յովսեայ, եւ օծին զնա եւ թա-
գաւորեցուցին զնա փոխանակ հօր իւրոյ։
31 Որդի քսան եւ երից ամաց էր Յո-
վաքազ ի թագաւորել իւրում, եւ երիս
ամիսս թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ
անուն մօր նորա Ամիտալ դուստր Երե-
32 միայի ի Ղոբնայ։ Եւ արար չար առաջի
Տեառն ըստ ամենայնի զոր արարին
33 հարք նորա։ Եւ [3]փոխեաց զնա Փարա-
ւոն Նեքաւով ի Ռեբղաթա յերկրին Ե-
մաթայ՝ չթագաւորել նմա յԵրուսաղէմ.
եւ արկ հարկ երկրին հարիւր տաղանդ
արծաթոյ եւ [4]տասն տաղանդ" ոսկւոյ։
34 Եւ թագաւորեցոյց Փարաւոն Նեքաւով
ի վերայ նոցա զԵղիակիմ որդի Յովսեայ
[5]արքայի Յուդայ" փոխանակ Յովսեայ
հօր իւրոյ, եւ փոխեաց զանուն նորա
Յովակիմ. եւ զՅովաքազ առ եւ տարաւ
35 յԵգիպտոս, եւ մեռաւ անդ։ Եւ զար-
ծաթն եւ զոսկին ետ Յովակիմ Փարա-
ւոնի. սակայն ճշգել [6]գրեցին զերկիրն
տալ զարծաթն բանիւ Փարաւոնի. այր
ըստ սակի իւրում եառն զարծաթ եւ
զոսկի հանդերձ ժողովրդեամբ երկրին
տալ Փարաւոնի Նեքաւովայ։
36 Որդի քսան եւ հնգ ամաց էր Յո-
վակիմ ի թագաւորել իւրում, եւ մե-
տասան ամ թագաւորեաց յԵրուսաղէմ.
եւ անուն մօր նորա [7]Եղդափ՝ դուստր
37 Յեդդեղայ" յՌուլմայ։ Եւ արար չար ա-
ռաջի Տեառն ըստ ամենայնի զոր արա-
րին հարք նորա։

[1]Եբր. Յաւուրս նորա [2]Եբր. զնա կառօք [3]Եբր. կապեաց [4]Եբր. տաղանդ մի [5]Յ Եբր. պոյոուէ [6]Եբր. գրեաց [7]Եբր. Զաբիդայ դուստր Փադայեայ

Գլ. ԻԴ

1 Յաւուրս նորա ել Նաբուքոդոնոսոր ար-
քայ Բաբելոնի, եւ եղեւ նորա ծառայ
Յովակիմ ամս երիս, եւ դարձաւ ապա-
2 րանջեաց ի նմանէ։ Եւ առաքեաց Տէր
նմա զմենկնակաղէնան Քաղդէացւոց, եւ
զմենկնակաղէնան Ասորւոց, եւ զմենկնա-
կաղէնան Մովաբայ, եւ զմենկնակաղէնան
որդւոցն Ամոնայ. եւ առաքեաց զնոսա
յերկիրն Հրէաստանի՝ սատակել զնա
ըստ բանին Տեառն զոր խօսեցաւ ի ձեռն
3 ծառայից իւրոց մարգարէից։ Քանզի
[8]բարկութիւն Տեառն էր" ի վերայ Յու-
դայ մերժել զնա յերեսաց իւրոց վասն
մեղաց Մանասէի, ըստ ամենայնի զոր
4 արար, Եւ վասն անպարտ արեանցն զոր
եհեղ եւ ելից զԵրուսաղէմ անպարտ
արեամբ. եւ ոչ կամեցաւ Տէր ցածնուլ։
5 Եւ մնացորդք բանիցն Յովակիմայ եւ
ամենայն ինչ զոր արար՝ ո՞չ ահաւասիկ
գրեալ են ի գիրս բանից աւուրց թա-
6 գաւորացն Յուդայ։ Եւ ննջեաց Յովա-
կիմ ընդ հարս իւր, եւ թագաւորեաց
Յովաքին որդի նորա ընդ նորա։
7 Եւ ոչ եւս յաւել արքայն Եգիպտաց-
ւոց ելանել յերկրէն իւրմէ. քանզի առ
արքայն Բաբելոնի ի հեղեղատէն Եգիպ-
տացւոց մինչեւ ցգետն Եփրատ՝ զամե-
նայն ինչ որ էր արքային Եգիպտացւոց։
8 Որդի ամաց ութուտասնից էր Յո-
վաքին ի թագաւորել իւրում, եւ երիս
ամիսս թագաւորեաց յԵրուսաղէմ, եւ
անուն մօր նորա Նեսթա՝ դուստր Եղա-
9 նաթայ յԵրուսաղեմէ. Եւ արար չար
առաջի Տեառն ըստ ամենայնի զոր ա-
րար հայր նորա։
10 Ի ժամանակի յայնմիկ [9]ել Նաբուքո-
դոնոսոր արքայ" Բաբելոնի յԵրուսաղէմ,
11 եւ եկն քաղաքն ի պաշարումն։ Եւ
[10]եմուտ արքայն Բաբելացւոց ի քաղաքն,
եւ ծառայք նորա պաշարեալ պահէին
12 զնա։ Եւ ել Յովաքին արքայ Յուդայ առ
արքայն Բաբելացւոց ինքն եւ ծառայք
իւր, եւ մայր իւր եւ իշխանք իւր եւ
ներքինիք իւր. եւ առ զնա արքայն Բա-
բելացւոց, յամի ութերորդի թագաւո-
13 րութեան իւրոյ։ Եւ եհան զամենայն
գանձս տանն Տեառն, եւ զգանձս տան

[8]Եբր. ըստ բանի Տեառն եղեւ [9]Եբր. ելին ծառայք Նաբուքոդոնոսորայ արքայի [10]Եբր. եկն Նաբուքոդոնոսոր

թագաւորին. եւ կոտորեաց զամենայն
անօթս ոսկեղէնս զոր արար Սողոմոն
արքայ Իսրայէլի ի տաճարին Տեառն ըստ
14 բանին Տեառն։ Եւ խաղացոյց զամե-
նայն Երուսաղէմ եւ զամենայն իշխանս
եւ զամենայն զօրաւորս զօրութեամբ ի
գերութեան, տասն հազար գերեաց, եւ
զամենայն զհիւսունս եւ [1]զդարբինս, եւ
ոչ ոք մնաց բաց յաղքատաց երկրին։
15 Եւ խաղացոյց զՅովաքին ի Բաբելոն, եւ
զմայր թագաւորին եւ զկանայս նորա
եւ զներքինիս նորա. եւ զզօրաւորս
երկրին վարեաց ի գերութիւն յԵրուսա-
16 ղեմէ ի Բաբելոն։ Եւ զամենայն արս
զօրութեան՝ արս եւթն հազար. եւ
զհիւսունս եւ [1]զդարբինս հազար այր,
ամենեքին զօրաւորք պատերազմօղք.
եւ վարեաց զնոսա արքայն Բաբելոնաց-
17 ւոց ի գերութեան ի Բաբելոն։ Եւ թա-
գաւորեցոյց արքայն Բաբելոնացւոց զՄաթ-
թանիա [2]որդի նորա ընդ նորա. եւ եդ
18 նմա անուն Սեդեկիա։ Որդի քսան եւ
մի ամաց էր Սեդեկիա ի թագաւորել
իւրում, եւ մետասան ամ թագաւորե-
աց յԵրուսաղէմ. եւ անուն մօր նորա
Ամիտաղ դուստր Երեմիայի ի Ղոբնայ։
19 Եւ արար չար առաջի Տեառն ըստ
20 ամենայնի զոր արար Յովակիմ։ Զի
սրտմտութիւն Տեառն էր ի վերայ Ե-
րուսաղեմի եւ Յուդայ, մինչեւ ընկէց
զնոսա յերեսաց իւրոց. եւ ՚նչկահեաց
Սեդեկիա զարքայն Բաբելոնացւոց։

ԳԼ. ԻԵ

1 Եւ եղեւ յամին իններորդի թագաւորու-
թեան նորա, յամսեանն տասներորդի
որ օր տասն էր ամսոյն, եկն Նաբու-
քոդոնոսոր արքայ Բաբելոնի եւ ամե-
նայն զօրք իւր ի վերայ Երուսաղեմի,
եւ բանակեցաւ զնովաւ, եւ շինեաց
2 շուրջ զնովաւ պարիսպ։ Եւ պաշարե-
ցաւ քաղաքն մինչեւ ցամն մետասա-
3 ներորդ Սեդեկեայ արքայի, Եւ յամիսն
իններորդ. եւ սաստկացաւ սով ի քա-
ղաքին, եւ ոչ գոյր հաց ժողովրդեան
4 երկրին։ Եւ խրամատեցաւ քաղաքն. եւ
ամենայն արք պատերազմի ելին ար-
տաքս գիշերի ի ճանապարհ դրանն ի
մէջ [3]պարսպացն, որ է առ պարտիզաւն
արքունի. եւ Քաղդէացիքն պատեալ
էին շուրջ զքաղաքաւն. եւ գնաց ընդ
5 ճանապարհն [4]Արաբայ։ Եւ պնդեցաւ
զօրն Քաղդեացւոց զհետ թագաւորին,
եւ հասին նմա [5]յԱրաբովթ Երիքովայ.
եւ ամենայն զօրք նորա ցրուեցան ի
6 նմանէ. Եւ կալան զթագաւորն եւ ա-
ծին առ արքայն Բաբելոնի ի Ռեբղաթա.
եւ խօսեցաւ ընդ նմա դատաստանօք։
7 Եւ զորդիսն Սեդեկեայ սպան առաջի
նորա, եւ զաչսն Սեդեկեայ կուրացոյց,
եւ կապեաց զնա կապանօք եւ տարաւ
ի Բաբելոն։
8 Եւ յամսեանն հինգերորդի, որ օր եւթն
էր ամսոյն, այն ամ ինն եւ տասներորդ
էր Նաբուքոդոնոսորայ արքայի Բաբե-
լոնացւոց, եկն Նաբուզարդան դահճապետ՝
յանդիմանակաց արքային Բաբելոնի յԵ-
9 րուսաղէմ, Եւ այրեաց զտունն Տեառն
եւ զտուն թագաւորին, եւ զամենայն
տունս Երուսաղեմի եւ զամենայն [6]տունս
10 այրեաց հրով։ Եւ զպարիսպն Երուսա-
ղեմի շուրջանակի քակեցին ամենայն
զօրքն Քաղդեացւոց որ ընդ դահճապե-
11 տին։ Եւ զաւելորդս ժողովրդեանն՝ զմնա-
ցեալս ի քաղաքին, եւ զանկեալսն յար-
քայն Բաբելոնացւոց, եւ զայլ եւս խու-
ժան ժողովրդեանն, խաղացոյց Նա-
12 բուզարդան դահճապետ։ Եւ յաղքատաց
երկրին եթող դահճապետն յայգեգործս
եւ յարդիւնարարս։
13 Եւ զսիւնսն պղնձիս [7]զերկոսին որ ի
տան Տեառն, եւ զմեքենովթան, եւ
զծովն պղնձի որ ի տան Տեառն, խոր-
տակեցին Քաղդէացիքն եւ բարձին
14 զպղինձ նոցա ի Բաբելոն։ Եւ զամանս
եւ զկաթսայսն եւ զպաշտանս եւ զտուփս,
եւ զամենայն անօթս պղնձիս որովք
15 պաշտէին՝ առին։ Եւ զբուրուառն եւ
զափսեայսն զարծաթիս եւ զոսկիս առ
16 դահճապետն. Եւ զսիւնսն զերկոսին եւ
զծովն զմի, եւ զմեքենովթան զոր ա-
րար Սողոմոն ի տան Տեառն. եւ ոչ
գոյր կշիռ պղնձոյ ամենայն անօթոյն։
17 Յութուտասն կանգնոյ բարձրութիւն
միոյ սեանն, եւ [8]քովթար պղնձի ի վե-
րայ նորա. եւ բարձրութիւն միոյ քով-
թարայ՝ յերից կանգնոց. եւ [9]սարաք, եւ
նռնաձեւք ի վերայ քովթարայն շուր-
ջանակի՝ ամենայն պղնձի. ըստ նմին

[1] Եբր. զդարբինս [2] Եբր. զհօրեղբայր [3] Եբր. երկուց պարսպացն

[4] Այսինքն՝ դաշտին [5] Այսինքն՝ ի դաշտսն [6] Եբր. տունս մեծ [7] Եբր. դոյլսն [8] Այսինքն՝ խոյակ [9] Այսինքն՝ վանդակակերպ

օրինակի եւ սեանն երկրորդի ի վերայ
սարսաքին ։
18 Եւ առ դահճապետն զՍարայիա քա-
հանայն զառաջինն , եւ զՍոփոնիա զերկ-
րորդ քահանայ , եւ զերիս պահապանս
19 [1]կչռոյն ․ Եւ ի քաղաքէ անտի առ ներ-
քինի մի , որ էր սահիկան արանց պատե-
րազմողաց , եւ հինգ այր ի յանդիմա-
նակայից արքայի գտեալս ի քաղաքին ,
եւ զգպրապետ իշխան զօրուն՝ զկարգիչ
ժողովրդեան երկրին , եւ վաթսուն այլ այր
ի ժողովրդենէ երկրին զգտեալս ի քաղա-
20 քին ։ Եւ առ զնոսա Նաբուզարդան դահ-
ճապետ , եւ տարաւ զնոսա առ արքայն
21 Բաբելոնի ի Ռեբղաթա ։ Եւ եհար զնոսա
արքայն Բաբելոնի , եւ սպան զնոսա ի
Ռեբղաթա յերկրին Եմաթայ ։ Եւ գերե-
22 ցաւ Յուդայ յերկրէ իւրմէ ։ Եւ զժողո-
վուրդն որ մնաց ի Յուդայ՝ եթող Նա-
բուքոդոնոսոր արքայ Բաբելոնի , եւ
կացոյց ի վերայ նոցա զԳոդողիա որդի
Աքիկամայ որդւոյ Սափանայ ։
23 Եւ լուան ամենայն իշխանք զօրուն
նորա եւ արք նոցա եթէ կացոյց ի վե-
րայ արքայն Բաբելոնի զԳոդողիա ․ եւ
եկին առ Գոդողիա ի Մասփա , Իսմա-
յէլ որդի Նաթանեայ եւ Յովնան որդի
Կարէի , եւ Սարայիա որդի Թանայեմայ
[2]Սոփիաթացի , եւ Յեզոնիա որդի Մա-
քաթայ , ինքեանք եւ արք իւրեանց ։
24 Եւ [3]երդուան Գոդողեայ՝ ինքեանք եւ

[1] Եբր․ դրան [2] Եբր․ Նետոփաթացի [3] Եբր․ երդուաւ Գոդողիա , նոցա եւ արանց նոցա

արք իւրեանց" . եւ ասէ ցնոսա , Մի
երկնչիք [4]յասպատակէ Քաղդեացւոյն ․
նստարուք յերկրիս , եւ ծառայեցէք ար-
քային Բաբելոնի, եւ բարի եղիցի ձեզ ։
25 Եւ եղեւ յամսեանն եւթներորդի եկն
Իսմայէլ որդի Նաթանեայ որդւոյ Եղի-
սամայ ի զաւակէ թագաւորաց, եւ տասն
այր ընդ նմա , եւ հարին զԳոդողիա եւ
մեռաւ , եւ զՀրեայսն եւ զՔաղդէացիսն
26 որ էին ընդ նմա ի Մասփա ։ Եւ յար-
եաւ ամենայն ժողովուրդն ի փոքուէ
մինչեւ ցմեծ , եւ իշխանք զօրուն մտին
յԵգիպտոս ․ զի երկեան յերեսաց Քաղ-
դեացւոյն ։
27 Եւ եղեւ յերեսներորդի եւ յեւթնե-
րորդի ամի գերութեանն Յովաքիմայ
արքայի Յուդայ , յամսեանն երկոտա-
սաներորդի , ի քսան եւ յեւթն ամսոյն,
բարձրացոյց Եւիլմարովդաք արքայ Բա-
բելոնի յամի թագաւորութեան իւրոյ՝
զգլուխ Յովաքիմայ արքայի Յուդայ ,
եւ եհան զնա ի տանէ բանտին իւրոյ ․
28 Եւ խօսեցաւ ընդ նմա քաղցրութեամբ․
եւ արկ զաթոռ նորա ի վերայ քան զա-
թոռ թագաւորացն որ ընդ նմա ի Բա-
29 բելոնի ։ Եւ փոխեաց զհանդերձս բանտի
նորա ․ եւ ուտէր հաց հանապազ առաջի
նորա զամենայն աւուրս կենաց իւրոց ։
30 Եւ ռոճիկ նորա ռոճիկ հանապազորդ
տուաւ նմա ի տանէ թագաւորին , հա-
մարօղ օր ըստ օրէ զամենայն աւուրս
կենաց իւրոց ։

[4] Եբր․ ի ծառայից

# ԳԼՈՒԽՔ ԱՌԱՋԻՆ ՄՆԱՑՈՐԴԱՑ

# ՄՆԱՑՈՐԴԱՑ

## ԱՌԱՋԻՆ

### ԳԼՈՒԽ Ա

1 ԱԴԱՄ, Սէթ, Ենովս, (2) Կայնան,
3 Մաղաղայէլ, Յարեդ, Ենովք,
4 Մաթուսաղա, Ղամէք, Նոյ. [1]Որդիք
Նոյի՟, Սէմ, Քամ, Յաբեթ։
5 Որդիք Յաբեթի՝ Գամեր, Մագոգ,
Մադայի, [1]Յաւիցան, [2]Եղիսան, Թոբէլ,
6 Մոսոք եւ Թիրաս։ Եւ որդիք Գամե-
րայ՝ Ասքանազ եւ Հռիփաթ եւ Թոր-
7 գոմա։ Եւ որդիք [3]Յաւիցանայ՝ Եղիսա եւ
Թարսիս, Կիտացիք եւ [4]Հռոդացիք։
8 Եւ որդիք Քամայ՝ Քուշ եւ Մեստ-
9 րեմ, Փուդ եւ Քանան։ Եւ որդիք Քու-
շայ՝ Սաբա, եւ Եւիլա եւ Սաբաթա եւ
Հռեգմա եւ Սաբաթաթա։ Եւ որդիք
10 Հռեգմայ՝ Սաբա եւ Դեդան։ Եւ Քուշ
ծնաւ զՆեբրովթ. սա սկսաւ լինել հսկայ
11 [1]որսորդ ի վերայ երկրի։ Եւ Մեստրեմ
ծնաւ զԼուդիիմացիս եւ զՂաբիիմացիս
եւ զԱնամիմացիս եւ զՆեփթաքիմացիս
12 Եւ զՊատրոսիիմացիս եւ զՔասղմնի-
մացիս, ուստի ելին անտի Փղշտացիք,
13 եւ զԳափթորիմացիս։ Եւ Քանան ծնաւ
զՍիդոն զանդրանիկ իւր եւ [5]զՔանա-
14 նացին Եւ զՅեբուսացին եւ զԱմոր-
15 հացին եւ զԳերգեսացին Եւ զԵւացին
16 եւ զԱրուկեցին եւ զԱսենացին Եւ
զԱրադացին եւ զՍամարացին եւ զԱ-
մաթացին։
17 Որդիք Սեմայ՝ Եղամ եւ Ասուր եւ Ար-
փաքսադ եւ Լուդ եւ Արամ, եւ [1]որ-
դիք Արամայ՟ Հուս եւ Եւղ եւ Գա-
18 թեր եւ Մոսոք։ Եւ Արփաքսադ ծնաւ
[1]զԿայնան, եւ Կայնան ծնաւ՟ զՍա-
19 ղա, եւ Սաղա ծնաւ զԵբեր։ Եւ Եբե-
րայ ծնան երկու որդիք, անուն միումն
Փաղէկ, զի յաւուրս նորա բաժանեցաւ
երկիր. եւ անուն եղբօր նորա Յեկտան։
20 Յեկտան ծնաւ զԵղմովդադ եւ զՍաղափ

[1] Յեբր. պ-է-ա-կ [2] Եբր. Յաւան [3] Եբր. Յաւա-
նայ [4] Կամ, Ռոդացիք [5] Եբր. զՔետ

21 եւ զԱսարմովթ եւ [6]զԿեդրուրան Եւ զԵ-
22 զէլ եւ զԴեկղան Եւ զԴեբաղ եւ զԱ-
23 բիմէէլ եւ զՍաբա Եւ [7]զՍուփիր եւ զԵ-
ւիլա եւ զՅովբաբ. ամենեքեան սոքա որ-
դիք Յեկտանայ։
24 [8]Որդիք Սեմայ՝ Եղամ եւ Ասուր եւ՟
25 Արփաքսադ, [1]Կայնան, Սաղա, Եբեր,
26 Փաղէկ, Ռագաւ, Սերուգ, Նաքովր,
27 Թարայ, Աբրամ, նա ինքն է Աբրահամ։
28 Եւ որդիք Աբրահամու՝ Իսահակ եւ Իս-
29 մայէլ։ Սոքա են [9]ծնունդք Իսմայելի՟,
30 Նաբէովթ եւ Կեդար եւ Աբդեէլ,
Մաբսան, Մասմա եւ Իդումա, Մասսէ,
31 Քոդադ, Թեման, Իտուր, Նափէս եւ
Կեդմա. սոքա են որդիք Իսմայելի։
32 Եւ որդիք Քետուրայ հարճին Աբրա-
համու, [10]եւ ծնաւ նմա՟ զԵմրան եւ
զՅեկսան եւ զՄադան եւ զՄադիան եւ
զՅեսբոկ եւ զՍովիւէ։ Եւ որդիք Յեկ-
սանայ՝ Սաբա եւ Դեդան. [1]եւ որդիք
Դեդանայ՝ Ռագուէլ եւ Աբդեէլ եւ Ա-
սուրիիմ եւ Լատուսիիմ եւ Լաովմիմ՟
33 Եւ որդիք Մադիանայ՝ Գեփա եւ Ափեր
եւ Ենովք եւ Աբիդա եւ Եղդա. ամենե-
քեան սոքա որդիք Քետուրայ։
34 Եւ ծնաւ Աբրահամ զԻսահակ. եւ որ-
35 դիք Իսահակայ՝ Եսաւ եւ [11]Յակոբ։ Որ-
դիք Եսաւայ՝ Եղիփազ եւ Հռագուէլ եւ
36 Յէուս եւ Եգղոմ եւ Կորխ։ Որդիք Ե-
ղիփազայ՝ Թեման եւ Ովմար, Սոփա,
Գոթոմ եւ Կենէզ. եւ [12]Թամար հարճ
37 Եղիփազու՝ ծնաւ նմա զԱմաղէկ՟։ Եւ
որդիք Ռագուելի՝ Նաքէթ, Զարեհ, Սո-
38 մէ եւ Մոզէ։ Եւ որդիք Սէիրայ՝ Ղով-
տան, Սոբաղ, Սեբեգոն, Անա, Դեսոն
39 եւ Ասար եւ Դիսան։ Եւ որդիք Ղով-
տանայ՝ Քոռի եւ Էման. եւ քոյր Ղով-
40 տանայ՝ Թամնա։ Որդիք Սովբաղայ՝

[6] Եբր. զՅարաք և զՅոթորամ [7] Եբր. զՕվփիր [8] Եբր.
Սէմ [9] Եբր. ծնունդք նոցա. անդրանիկն Իսմայելի
[10] Եբր. նա ծնաւ [11] Եբր. Իսրայէլ [12] Եբր.
Թամնա եւ Ամաղէկ.

Գոլղամ եւ Մանաքաթ եւ Գեբաղ եւ
Սովփա եւ Յովնան. եւ որդիք Սեբե-
41 գոնի՝ Այիա եւ Անա։ Եւ որդիք Անայ՝
Դեսոն [1]եւ Եղիբամա դուստր Անայի”.
եւ որդիք Դեսոնի՝ Ամրան եւ Եսեբան եւ
42 Յեթրան եւ Քառան։ Եւ որդիք Ասա-
րայ՝ Բաղաան եւ [2]Ազուկամ եւ Յովի-
կամ եւ Ուկամ”. եւ որդիք Դիսանայ՝
Ովս եւ Առան։
43 Եւ այսոքիկ թագաւորք նոցա որք
թագաւորեցին յԵդովմ, յառաջ քան
զթագաւորել թագաւոր որդւոցն Իսրա-
յէլի. [3]Բաղակ որդի Սեփովրայ”. եւ ա-
44 նուն քաղաքի նորա Դենաբա։ Եւ մե-
ռաւ [4]Բաղակ, եւ թագաւորեաց փո-
խանակ նորա Յոբաբ, որդի Զարեհի ի
45 Բոսորայ։ Եւ մեռաւ Յոբաբ, եւ թա-
գաւորեաց փոխանակ նորա Ասովմ յերկ-
46 րէն Թեմնացւոց։ Եւ մեռաւ Ասովմ, եւ
թագաւորեաց փոխանակ նորա Ադադ,
որդի Բաղադայ, որ եհար զՄադիամ ի
դաշտին Մովաբայ, եւ անուն քաղաքի
47 նորա [5]Գէթեմ։ Եւ մեռաւ Ադադ, եւ
թագաւորեաց փոխանակ նորա Սամաա
48 ի Մասրեկայ։ Եւ մեռաւ Սամաա, եւ
թագաւորեաց փոխանակ նորա Սաւուղ
49 յՌոբովթայ, որ առ Գետեզերբն էր։ Եւ
մեռաւ Սաւուղ, եւ թագաւորեաց փո-
խանակ նորա Բաղաենոն որդի Աքոբով-
50 րայ։ Եւ մեռաւ Բաղաենան [1]որդի Ա-
քոբովրայ”, եւ թագաւորեաց փոխանակ
նորա Ադադ, եւ անուն քաղաքի նորա
Փոգով, եւ անուն կնոջ նորա Մետա-
բեէլ՝ դուստր Մատրադայ[6]։
51 Եւ մեռաւ Ադադ. եւ այս են իշխանք
Եդովմայ. իշխան Թամնա, իշխան
52 Գովղա, իշխան Յեթաթ. Իշխան Ողի-
բամաաս, իշխան Հելա, իշխան Փենովն,
53 Իշխան Կենեզ, իշխան Թեման, իշխան
54 [7]Գաբսար, Իշխան Մագեդիէլ, իշխան
Զաբոյին. սոքա են իշխանք Եդովմայ։

Գլ. Բ

1 Եւ այս են անուանք որդւոցն Իսրա-
յէլի. Ռուբէն, Շմաւոն, Ղեւի, Յուդա,
2 Իսաքար, Զաբուղոն, Դան, Յովսէփ,
Բենիամին, Նեփթաղիմ, Գադ, Ասեր։
3 Եւ որդիք Յուդայ, Էր եւ Աւնան եւ
Սեղովմ. երեք սոքա ծնան նմա ի դստե-
րէն Շաւայ Քանանացւոյ. եւ [8]էր ան-
դրանիկն Յուդայ չար առաջի Տեառն,
4 եւ սպան զնա։ Եւ Թամար նու նորա
ծնաւ նմա զՓարէս եւ զԶարա. ամե-
նեքին սոքա որդիք Յուդայ հինգ։
5 Որդիք Փարեսի՝ Եսրոմ եւ Յամուէլ։
6 Եւ որդիք Զարայի՝ Զամբրի եւ Եթան եւ
Եման եւ Քաղքաղ եւ Դարա, ամենեք-
7 եան հինգ։ Եւ որդիք Քարմեայ՝ Աքար
խափանիչն Իսրայելի որ անօրինեցաւ ի
8 նզովսն։ Եւ որդիք Եթանայ՝ Ազարիա։
9 Եւ որդիք Եսրոմայ որք ծնան նմա՝ Յե-
րամէլ եւ [9]Ովրամ եւ Աքոբէլ եւ Արամ”։
10 Արամ ծնաւ զԱմինադաբ, եւ Ամի-
նադաբ ծնաւ զՆաասոն զիշխան տանն
11 Յուդայ. Եւ Նաասոն ծնաւ զՍաղմոն,
12 Սաղմոն ծնաւ զԲոոս, Եւ Բոոս ծնաւ
13 զՈվբեդ, եւ Ովբեդ ծնաւ զՅեսսէ, Եւ
Յեսսէ ծնաւ զանդրանիկն իւր զԵղիաբ,
եւ զԱբինադաբ երկրորդ, եւ զՍամաա
14 երրորդ, Եւ զՆաթանայէլ չորրորդ, եւ
15 զՀադդայի հինգերորդ, Եւ զԱսոմ վե-
16 ցերորդ, եւ զԴաւիթ եւթներորդ։ Եւ
քորք նոցա Շարուհեա եւ Աբիգեա. եւ
որդիք Շարուհեայ՝ Աբեսսա եւ Յովաբ
17 եւ Ասայէլ, երեք։ Եւ Աբիգեա ծնաւ
զԱմեսայի. եւ հայր Ամեսեայ՝ Յեթրի
Իսմայելացի։
18 Եւ Քաղէբ որդի Եսրոմայ [10]առ զԱզուբա
կին իւր, եւ ծնաւ զԵրիմովթ”. եւ սո-
քա են որդիք նորա. Յովասար եւ Սով-
19 բաբ եւ [11]Որնա։ Եւ մեռաւ Ազուբա, եւ
առ իւր Քաղէբ զԵփրաթ, եւ ծնաւ
20 նմա զՈվր։ Եւ Ովր ծնաւ զՈվրի, եւ
Ովրի ծնաւ զԲեսելիէլ։
21 Եւ յետ այսորիկ եմուտ Եսրոմ առ
դուստր Մաքիրայ հօրն Գաղաադու, եւ
նա առ զնա. եւ ինքն էր ամաց վաթ-
22 սուն. եւ ծնաւ նմա զՍեգուբ։ Եւ Սե-
գուբ ծնաւ զՅայիր. եւ էին նորա քսան
23 եւ երեք քաղաքք ի Գաղաադ։ Եւ առ
զԳեսուր եւ զԱրամ, զգեղսն Յայիրայ
ի նոցանէ, զԿանաթ եւ զաւանս նորա
վաթսուն քաղաք, զամենեսեան որդ-
24 ւոցն Մաքիրայ՝ հօրն Գաղաադու։ Եւ
յետ մեռանելոյն Եսրոմայ՝ եկն Քաղէբ

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. Զաւուան և Յաական [3] Եբր. Բաղա որդի Բէովրայ [4] Եբր. Բաղա [5] Եբր. Աւիթ [6] Եբրայեցին յաւելու, դուստր Մեզաաբայ։ [7] Եբր. Մաբզար

[8] Եբր. եղեւ Էր [9] Եբր. Ռամ (Արամ) եւ Քե-ղուբա (Քաղեբ). (տե՛ս Հմր. 18. 42։) [10] Եբր. ծնաւ յԱզուբայ կնոջէ իւրմէ եւ յԵրիմովթայ [11] Եբր. Արդոն

յԵփրաթա. եւ կին Եսրոմայ Աբիա ծնաւ
նմա զԱսքոմ զհայր Թեկուայ։
25 Եւ էին որդիք Յերեմիելի անդրանկանն Եսրոմայ, անդրանիկ Հռամա եւ
Բաամ եւ Առամ եւ Ասոմ [1]եղբայր նո-
26 րա՝։ Եւ էր կին այլ Յերեմիելի, եւ ա-
նուն նորա Ատարա. նա է մայր Ոնո-
27 մայ։ Եւ էին որդիք Հռամայ անդրանկանն Յերեմիելի՝ Մաաս եւ Յամին եւ
28 Ակոր։ Եւ էին որդիք Ոնամայ՝ Սամայի
եւ Յադայի. եւ որդիք Սամայայ՝ Նա-
29 դաբ եւ Աբիսուր։ Եւ անուն կնոջն Ա-
բիսուրայ [2]Աբիխեա. եւ ծնաւ նմա զԱ-
30 զաբար եւ զՄովլիդ։ Եւ որդիք Նադաբայ Սաղադ եւ Ափփեմ. եւ մեռաւ Սա-
31 ղադ, եւ ոչ գոյր նորա որդի։ Եւ որ-
դիք Ափփեմայ՝ Յեսսի. եւ որդիք Յեսսեայ՝ Սովսան. եւ որդիք Սովսանայ՝
32 Ադայի։ Որդիք [3]Ադայեայ՝ Աքիսամա եւ՝
Յեթեր եւ Յովնաթան. եւ մեռաւ Յե-
33 թեր, եւ ոչ գոյր նորա որդի։ Եւ որդիք
Յովնաթանայ՝ Փաղէթ եւ Զազա. սոքա
են որդիք Յերեմիէլի։
34 Եւ ոչ գոյին Սովսանայ ուստերք, այլ
դստերք միայն. եւ Սովսանայ էր ծառայ
Եգիպտացի, եւ անուն նորա Յովքադ.
35 Եւ ետ Սովսան զդուստրն իւր Յովքեդլի
ծառային իւրում կնութեան, եւ ծնաւ
36 նմա զՅեթթի։ Եւ Յեթթի ծնաւ զՆա-
37 թան, եւ Նաթան ծնաւ [4]զԱբեդ, եւ
Աբեդ՝ ծնաւ զՈփղադ, եւ Ոփղադ ծնաւ
38 զՈվբեդ, Եւ Ովբեդ ծնաւ զՅէու, եւ
39 Յէու ծնաւ զԱզարիաս, Եւ Ազարիաս
ծնաւ զԲեղղէս, եւ Քեղղէս ծնաւ զԵղէ-
40 սաա, Եւ Եղէսաա ծնաւ զՍոսմէ, եւ
41 Սոսմէ ծնաւ զՍադղում, Եւ Սադղում
ծնաւ [5]զՅեքոնիաս, եւ Յեքոնիա՝ ծնաւ
զԵզլիսամա։
42 Եւ որդիք Քաղեբայ եղբօր Յերեմիե-
լի՝ [6]Մարիսա անդրանիկ նորա. սա է
հայր Զիփայ. եւ [7]որդիք Մարիսայ հօր՝
43 Քեբրոնի։ Եւ որդիք Քեբրոնի՝ Կորխ եւ
44 Թափուի եւ Հռեկոմ եւ Սեմաա։ Եւ
Սեմաա ծնաւ զՀռաամ զհայրն [8]Յերա-
կայ, եւ Յերակիմաա՝ ծնաւ զՍադամա։
45 Եւ որդիք նորա Մաոն, հայր Բեթսուլ-
46 րայ։ Եւ Գեփա հարճ Քաղեբայ՝ ծնաւ
47 զԱռան եւ զՅովսա եւ զԳեզուէ[9]։ Եւ
որդիք Ադայի՝ Հռագեմ եւ Ովթամ եւ
Գեսոմ եւ Փաղէտ եւ Գեփա եւ Սա-
48 գափ։ Եւ հարճն Քաղեբայ Մոլքա՝ ծնաւ
49 զՍեբեր եւ զԹաքնա։ Եւ ծնաւ [10]Սա-
գափ զհայրն Մադենայ, եւ Սաուդ
զհայրն Մաքամենայ, եւ զհայրն Բաա-
ղայ. եւ դուստրն Քաղեբայ Աքսա՝։
50 Սոքա էին որդիք Քաղեբայ. [11]որդիք
Ովրայ անդրանկանն Եփրաթայ՝ Սովբադ
51 հայր Կարիաթարիմայ, Սաղմոն հայր
[12]Բեթղամոնայ, հայր Բեթղեէմ, Արի՝ հայր
52 Բեթեգովրայ։ Եւ էին որդիք Սովբա-
53 դայ հօրն Կարիաթարիմայ՝ [13]Արա, Ե-
ոի, Ամանիթ, Թիւմասփայէ եւ Հոփա-
թիաւր, Եթադիմ եւ Եփիթին եւ Սա-
մաթին, Հեմասարին՝. ի նոցանէ ելին
54 Սարաթայիք եւ Եսթաւուղացիք։ Որ-
դիք Սաղմոնի՝ Բեթղեհեմ եւ Նետոփա-
թի, Ատարոթ, տուն Յովաբայ եւ [14]Կես-
55 մանաթայ, Եսարայի՝. Տոհմ դպրացն
որք բնակէին ի Գարէս, [15]Ագաթեիմ եւ
Սամաթիիմ, Սովկաթիիմ՝. սոքա են
[16]ատունք որք եկին յեմաթայ, [17]հօր տան
Հռեքաբայ։

ԳԼ. Գ

1 Եւ սոքա են որդիք Դաւթայ որք ծնան
նմա ի Քեբրոն. անդրանիկն Ամնոն՝ յԱ-
քինովամայ Յեզրայելացւոյ. եւ երկ-
րորդն [18]Դալուիա՝ յԱբիգեայ Կարմե-
2 ղացւոյ. Երրորդն Աբիսողոմ, որդի Մոլ-
քայ՝ դստեր Թողմայ թագաւորին Գե-
սուրայ. չորրորդ Ադոնիա՝ որդի Ագի-
3 թայ. Հինգերորդ Սափատիա՝ յԱբիտա-
ղայ. վեցերորդ Յեթրամ, յԵգղաթայ կնոջէ
4 իւրմէ։ [19]Սոքա ծնան նմա ի Քեբրոն.
եւ թագաւորեաց անդ զեւթն ամ եւ
զվեց ամիս. եւ երեսուն եւ երիս ամս
թագաւորեաց յԵրուսաղէմ։
5 Եւ սոքա ծնան նմա յԵրուսաղէմ,
Սամաա, Սովբաբ, Նաթան, եւ Սողոմոն

[1] Եբր. ► Աքիա [2] Եբր. Աբիհայիլ [3] Եբր. Ադայայ, եղբօր Սամայայ, [4] Եբր. զԶաբադ. (37) Եւ Զաբադ [5] Եբր. զՅեկամիա, եւ Յեկամիա [6] Եբր. Մեսա [7] Եբր. որդի Մարեսա էր հայր [8] Եբր. Յարկաամայ, եւ Հռեկոմ

[9] Եբրայեցին յաւելու, եւ Առան ծնաւ զԳեզուէ [10] Եբր. զՍագափ զհայրն Մադմենայ, և զՇուա զհայրն Մաքբենայ եւ զհայր Գաբայայ. եւ դուստրն Քաղեբայ էր Աքսա [11] Եբր. որդւոյ [12] Եբր. Բեթղեհեմայ, Հարեփ [13] Եբր. Հարոէ, կէս Մանաքաթացւոց. (53) Եւ տոհմք Կարիաթարիմայ՝ Յեթերացիք, Փութացիկ, Սամաթացիք, Մասարացիք. [14] Եբր. կէս Մանաթայ եւ Սարացիք [15] Եբր. Թարգաթացիք. Սամաթացիք, Սովկաթացիք [16] Եբր. Կենեցիք [17] Եբր. ի հօրէ [18] Եբր. Դանիէլ [19] Եբր. Սոքա վեցեքին

[1]ի Բերսաբեեացւոյն ի դստերէ Ամիելի .
6 Եւ Յեբաար եւ Եղիսամա եւ Եղիփա-
7 ղէտ Եւ Նագեբ եւ Նափեկ եւ Յափիէ
8 Եւ Եղիսամա եւ Եղիադա. [2]սոքա ինն
9 եւ տասն որդի՛՛ Դաւթայ, առանց որդ-
ւոց հարճից նորա . եւ Թամար քոյր նոցա :
10 Որդիք Սողոմոնի, Ռոբովամ եւ Ա-
բիաս որդի նորա, Ասա որդի նորա,
11 Յովսափատ որդի նորա, Յովրամ որդի
նորա, Ոքոզիաս որդի նորա, Յովաս
որդի նորա, Ամասիա որդի նորա, Ա-
12 զարիա որդի նորա, Յովաթամ որդի
13 նորա, Աքազ որդի նորա, Եզեկիա որ-
14 դի նորա, Մանասէ որդի նորա, Ամոն
15 որդի նորա, Յովսիա որդի նորա : Եւ
որդիք Յովսեայ, անդրանիկն [3]Յովաքազ,
երկրորդ Յովակիմ, երրորդ Սեդեկիա,
16 չորրորդ Սեղում : Եւ որդիք Յովակի-
մայ, Յեքոնիաս որդի նորա, Սեդեկիաս
17 որդի նորա : Եւ որդիք Յեքոնեայ, Ասիր,
18 Սաղաթիէլ որդի նորա : Մեղքիրամ եւ
Փադայիաս եւ [4]Սովամով եւ Նաբա-
19 սիաս եւ Սաննասար եւ Յեքոնիաս : Եւ
որդիք Սաղաթիելի՛՛, Զորաբաբել եւ
Սեմէի . եւ որդիք Զորաբաբելի՝ Մոսո-
ղամոս եւ Անանիաս եւ Սաղոմիթ քոյր
20 նոցա, Եւ Ասուբա եւ Ոող եւ Բարա-
քիաս եւ Ասադիաս եւ Ասոբասէդ, [5]ութ :
21 Եւ որդիք Անանեայ՝ Փաղէտիա, եւ Յե-
սիա որդի նորա, Հռափայիա որդի նո-
րա, Ոռնա որդի նորա, Աբդիա որդի
22 նորա, Սեքենիա որդի նորա : Եւ որդիք
Սեքենեայ՝ Սամայիա. եւ որդիք Սամայ-
եայ՝ Քետտուս եւ [6]Յովէլ եւ Բերիա եւ
Նովադիա եւ Սափատ եւ Սափեք՛՛, վեց :
23 Եւ որդիք [7]Նովադեայ՝ Եղիոնէ, Եզե-
24 կիաս, Եզրիկամ, երեք : Եւ որդիք Ե-
ղիոնեայ, Ովդուիա եւ Եղիասիբ եւ
Փադայիա եւ Ակկուբ եւ [3]Յովնան եւ
Դաղայիա եւ Անանիա, եւթն :

## ԳԼ. Դ

1 Որդիք Յուդայ Փարէս, Եսրոմ եւ Քարմի
2 եւ Ովր եւ Սուբաղ, Եւ [8]Կերիա որդի
նորա . եւ Սուբաղ՛՛ ծնաւ զՅէթ, եւ
Յէթ ծնաւ զԱքիմայի եւ զՂադա. սոքա
3 են ծնունդք Սարաթեայ : Եւ սոքա են
որդիք Եստամայ, Յեզրայէլ եւ Յեսմա եւ
Գաբէս, եւ անուն քեռ նոցա Եսեղե-
4 փոն : Եւ Փանուէլ հայր Գեդուրայ . եւ
Եզեր՝ հայր Ովսանայ . եւ Սոքա են որ-
դիք Ովրայ անդրանկանն Եփրաթայ՝
հօրն Բեթղեհեմայ :
5 Եւ Ասքուրայ՝ հօրն Թեկուայ էին եր-
6 կու կանայք, Աադա եւ Նաարա . Եւ
ծնաւ նմա Նաարա զՈքոզամ եւ զՆե-
փադ եւ զԹեմանն եւ զԱսթերան . ամե-
7 նեքեան սոքա որդիք Նաարայ : Եւ որ-
դիք Աադայ՝ Սարեթ եւ Ասաար եւ
8 Եթնանի : Եւ Կովս ծնաւ զԵնոմբ, եւ
զՍովբեբա, եւ [9]այս են ծնունդք եղբօրն
Հռեքաբայ՛՛ որդւոյ Յարիմայ :
9 Եւ էր Գաբէս փառաւոր քան զեղբարսն
իւր, եւ մայրն կոչեաց զանուն նորա
Գաբէս, եւ ասէ, Ծնայ [10]իբրեւ զԳաբէս՛՛ :
10 Եւ կոչեաց Գաբէս զԱստուած Իսրայելի
եւ ասէ, Եթէ օրհնելով օրհնեսցես զիս,
եւ յաճախեսցես զսահմանս իմ, եւ եղիցի
ձեռն քո ընդ իս, եւ [11]արասցես գի-
տութիւն՝ ոչ խոնարհեցուցանել զիս՛՛ : Եւ
ած Աստուած ի վերայ նորա զամենայն
զոր ինչ խնդրեաց :
11 Եւ [12]Քաղեբ հայր Եսքասայ՛՛ ծնաւ
12 զՄաքիր . սա է հայր Ասթոնայ : Եւ
Ասթոն ծնաւ զԲատրափա եւ զՓեսէ եւ
զԹանա զհայրն [13]քաղաքին Նաասայ,
եղբօրն Եսեղոմի Կենեզացւոյ՛՛. սոքա
13 են արք Հռեփայ : Եւ որդիք Կենեզայ՝
Գոթոնիէլ եւ Սարայիա . եւ որդիք Գո-
14 թոնիելի՝ Աթաթ : Եւ Մանաթի ծնաւ
զԳովորայ, եւ Սարայիա ծնաւ զՅովաբ
զհայրն Գերասիմայ . քանզի հիւսունք
15 էին : Եւ որդիք Քաղեբայ [14]Յեփոնէ,
Եզա եւ Նաամ. եւ որդիք [15]Ազամայ՝ Կե-
16 նէզ . Եւ որդիք Յալելի Զիփ եւ Զե-
17 փա եւ Թիրա եւ Եսրայէլ : Եւ որդիք
Եզրայի Յեթեր, Մովրադ եւ Գափեր .
եւ [16]Ադոն ծնաւ զՅեթեր եւ զՄարոն
եւ զՅեսմա, եւ զԱյեսբա՛՛ զհայրն Էսթե-
18 մոնայ : Եւ կին նորա [17]ծնաւ զՅարեդ,
զհայրն Գեդովրայ, եւ զՅաբար զհայրն

---

[1]Եբր. չորեքին սոքա ի Բաթսուայ, դստերն՝ ի Բերսաբեայ, [2]Եբր. եւ Եղիփաղէտ. ինն. (9) Ամենեքին որդիք [3]Եբր. Յոհանան [4]Եբր. Սանեսար, Յեկամիա, Ովսամա եւ Նատաբիա էին : (19) Եւ որդիք Փադայիայ՝ [5]Եբր. Հինգ
[6]Եբր. Իգաղ եւ Բերիա եւ Նաարիա և Սափատ
[7]Եբր. Նաարեայ [8]Եբր. Ռէայիա որդի Սուբաղայ

[9]Եբր. զտոհմս Աչարհելայ [10]Եբր. զնա ի ցաւս
[11]Եբր. փրկեսցես ի չարէ զի մի՛ ցաւեսցէ ինձ
[12]Եբր. Քեղուբ եղբայր Սուհայ [13]Եբր. Իրնաասայ [14]Եբր. որդւոց Յեփոնեայ՝ Իրու, [15]Եբր. Եղայ [16]Եբր. Ազոն. եւ կին նորա ծնաւ զՄարիամ եւ զՇամմայի, եւ զՅեսբա, [17]Եբր. Յուդիա ծնաւ

Սաքովնայ, եւ զՅեքթիէլ զհայրն Զով-
նանայ. եւ սոքա են որդիք Բեթթեայ
դստերն Փարաւոնի, զոր առ Մովրեդ։
19 Եւ որդիք կնոջ Ովդեայ՝ քեռն [1]Նաքի-
մայ, եւ Դանա հայր Կեսեայ, եւ Սի-
մէոն հայր Յովմանայ. եւ որդիք Նայե-
մայ հօր Կէիլայ՝ Ոսարիմի եւ Յեսթեմոն
20 եւ Մաքաթի"։ Եւ որդիք Սամիոնայ՝
Ամնոն եւ Հոաննանն [2]որդի Սնանայ",
եւ Թիլոն. եւ [3]որդի Յեսսեայ՝ Զովքաթ,
եւ որդիք Զովքաթայ"։
21 Որդիք Սեղումայ. որդւոյ Յուդայ՝ Էր
հայր Ղեքադայ, եւ Ղադաա հայր Մա-
րեսայ. եւ [4]ծնունդք նոցա՝ Երգաթ,
22 Աբուսաան, Նեսորա" Եւ Յովակիմ. եւ
արք Քուզեբայ եւ Յովաս եւ Սարափ,
որք բնակեցին ի Մովաբ. եւ [5]դարձոյց
23 նոցա զԱբեթար ի Նաթուկիմ"։ Սոքա
էին բրուտք որք բնակէին յԱնատիմ,
եւ ի Գաթերա ընդ թագաւորին [6]ի թա-
գաւորութեան նորա, զօրացան եւ"
բնակեցին անդ։
24 Որդիք Շմաւոնի՝ Նամուէլ եւ Յամին
25 եւ Յարիբ, Զարեհ, Սաւուղ, Սաղէմ
որդի նորա, Բասամ որդի նորա, Ասե-
26 ման որդի նորա, Մագբա որդի նորա,
Ամուէլ որդի նորա, [7]Սաբուդ որդի նո-
րա," Զաքուր որդի նորա, Սեմէի որդի
27 նորա։ Եւ Սեմեայ որդիք [8]վեց եւ
դստերք [9]տասն. եւ եղբարց նոցա
ոչ էին որդիք բազումք. եւ ամենայն
տոհմն նոցա ոչ առաւելաւ իբրեւ զոր-
28 դիսն Յուդայ։ Եւ բնակեցին ի Բերսաբէէ
եւ [7]Սամաա եւ" Մովլադա եւ Ասերսուղա
29 Եւ ի Բասղա եւ ի Բասամ եւ ի Թու-
30 ղադայ Եւ ի Բաթուղ եւ յԵրմա եւ ի
31 Սիկեղակ Եւ [10]Բեթմարա եւ Քարորա,
եւ կէսն Սեովսիմ եւ տունն Բարուայ եւ
Սէովրիմայ". այսոքիկ են քաղաքք նո-
32 ցա մինչեւ ցարքայ Դաւիթ. Եւ [11]քա-
ղաքք նոցա՝ Երամ եւ Երեմոն" եւ Թո-
քան եւ Եսան [7]եւ Թեկեն", քաղաքք
33 հինգ։ Եւ ամենայն [12]քաղաքք նոցա,
եւ շուրջ զքաղաքօքն իւրեանց" մին-
չեւ ի Բաաղ. այս են կալուածք նոցա՝
34 եւ վիճակք իւրեանց։ Եւ Մոսոբաբ եւ
35 Յամղէկ եւ Յովսիա որդի Ամասեայ. Եւ
Յովէլ եւ Յէու որդի Սաբեայ, որդի
36 Սարեայ, որդի Ասիելի. Եւ Եղիովէ եւ
Յեկեբա եւ [7]Յասթէ եւ" Յասուիա եւ
Ասայիա եւ Եդիէլ եւ Իսմայէլ եւ Բան-
37 եա Եւ Զուզա որդի Սեփերեայ, որդւոյ
Աղովնեայ, որդւոյ Յեդեայ, որդւոյ Սա-
38 մարեայ, որդւոյ Սամուելեայ։ Սոքա են
որ անցին յանուանս իշխանացն՝ յազգս
իւրեանց, եւ ի տունս տոհմից իւրեանց
39 բազմացան յաճախութեամբ։ Եւ գնա-
ցին մինչեւ ի դալ [13]ի Գերարա՝ մինչեւ
յարեւելից [14]Գայեայ, խնդրել արօտ
40 անասնոց իւրեանց. Եւ գտին արօտ
բազումս եւ բարիս. եւ երկիր ընդար-
ձակ առաջի նոցա, եւ խաղաղութիւն
եւ հանդարտութիւն. վասն զի յորդւոցն
Քամայ էին որք բնակէին անդ յառաջ։
41 Եւ եկին նոքա գրեալք յանուանէ յա-
ւուրս Եզեկեայ արքայի Յուդայ, եւ հա-
րին զբնակիչս նոցա, եւ զՄինեցիսն զորս
գտին անդ, եւ նզովեցին զնոսա մին-
չեւ յօրս յայս, եւ բնակեցին փոխանակ
նոցա. վասն զի արօտ անասնոց իւր-
42 եանց գտին անդ։ Եւ ի նոցանէ յորդ-
ւոցն Շմաւոնի գնացին ի լեառն Սէիրայ
արք հինգ հարեւր, եւ Փաղատիա եւ
Նովարիա եւ Հռափայիա եւ Ոզիէլ՝ որ-
43 դիք [15]Յեթեսեայ՝ իշխանք նոցա. Եւ
հարին զմնացորդսն որք էին մնացեալք
յԱմաղեկայ, եւ բնակեցին անդ մինչեւ
յօրս յայս։

## ԳԼ. Ե

1 Եւ որդիք Ռուբենի՝ անդրանկանն Իս-
րայելի, վասն զի նա էր անդրանիկ. եւ
յելանելն նորա յանկողինս հօր՝ իւրոյ
ետ զօրհնութիւն նորա որդւոյ իւրում
Յովսեփայ՝ որդւոյ Իսրայելի. եւ ոչ
համարեցաւ յազգ յանդրանկութեանն
2 իւրում. Վասն զի Յուդա զօրաւոր էր
ուժով յեղբարսն իւրում. եւ [16]էր իշ-
խան նոցա. եւ եղեւ օրհնութիւնն"
3 Յովսեփայ։ Որդիք Ռուբենի անդրան-
կանն Իսրայելի՝ Ենովք եւ Փաղղուս, Եսո-

[1]Եբր. Նայեմայ էին հայր Կէիլայ՝ Կարմեցի, եւ Յեսթեմոն Մաքաթացի [2]Եբր. Բենանան [3]Եբր. որդիք Յեսսեայ՝ Զոհեթ եւ Բենզոհեթ [4]Եբր. տոհմք տանն բեհեզագործաց ի տան Աշբեայ։ [5]Եբր. Յասուբի-ղեհէմ. եւ այսոքիկ զրոյցք հինգ [6]Եբր. ի սպասու նորա [7]Յ Եբր. դ-ն-է [8]Եբր. վեշտասան [9]Եբր. վեց [10]Եբր. ի Բեթմար քաբովթ եւ յԱսերսուսիմ եւ ի Բեթբարէի եւ ի Սագարայիմ [11]Եբր. աւանք նոցա, Եթամ եւ Ային, Ռեմոն [12]Եբր. աւանք նոցա որ շուրջ զքաղաքօքս այսոքիւք

[13]Եբր. ի Կեդովրա [14]Եբր. հովտին [15]Եբր. Յեսեայ [16]Եբր. իշխանն՝ ի նմանէ, եւ եղեւ անդրանկութիւնն

4 բուիմ եւ Քարմի ։ [1]Որդիք Յովելայ,
5 Սեմէի, եւ Բերենա որդի նորա, եւ որ-
դիք Գովգայ. որդիք Սեմէի, որդի նո-
6 րա Բաաղ˝, Որդի նորա Բէէրա, զոր
գերեաց Թագղաթփաղասար արքայ Ա-
սորեստանի. նա էր. իշխան Ռուբենի ։
7 Եւ եղբարք նորա ի տոհմին իւրեանց,
եւ ի վիճակին իւրեանց. յազգին իւր-
8 եանց իշխան [2]Յովէլ եւ Զաքարիա ։ Եւ
Բաղէ որդի Ոզուզայ, որդի Սեմայ, որդի
Յովելի. նա բնակեաց յԱրոյեր եւ ի
9 Նաբաւ եւ ի Բեելմաոն. Եւ յարեւելս
բնակեաց, մինչեւ ի գալ յանապատն ի
գետոյն Եփրատայ. վասն զի անասուն
10 բազում էր նոցա ի Գաղաադ ։ Եւ յա-
ւուրսն Սաւուղայ արարին պատերազմ
ընդ [3]բնակիչսն, եւ անկան ի ձեռս նո-
ցա [4]բնակեալքն ի խորանսն˝ մինչեւ յա-
մենայն յարեւելից Գաղաադու ։
11 Որդիք Գադայ յանդիման նոցա բնա-
12 կեցին ի Բասան մինչեւ ի Սեղքէ, Յո-
վէլ անդրանիկն, եւ Սափա երկրորդն,
13 եւ Անայի [5]որ է դպիր˝ ի Բասան. Եւ
եղբարք նոցա [6]բնակեցան ի տունս տոհ-
միցն իւրեանց. Միքայէլ եւ Մոսողամ
եւ Սովբայէ եւ Յովրէ եւ Յաքան եւ
14 Ազիա եւ Ովբէր, եւթն ։ Սոքա որդիք
Աբիքայեայ, որդւոյ Ուրիայ, որդւոյ [7]Ա-
դայի, որդւոյ Գաղաադու, որդւոյ Մի-
քայելի, որդւոյ Յեսեսայ, որդւոյ Յեդ-
15 դայեայ, Որդւոյ [8]Աքիբուղայ, որդւոյ˝
16 Աբդիելի, որդւոյ Գունեայ. Իշխան տան
տոհմից [9]բնակչաց ի Գաղաադ, ի Բա-
սան եւ յաւանս նոցա, եւ յամենայն
[10]շուրջ գաւառն Սարոնայ մինչեւ յելս
17 ամենեցուն համարոյն նոցա˝, յաւուրս
Յովաթամայ արքայի Յուդայ, եւ յա-
ւուրս Յերոբովամայ արքայի Իսրայելի ։
18 Որդիք Ռուբենի եւ Գադայ եւ կիսոյ
ցեղին Մանասէի՝ յորդւոյն զօրութեան,
արք որ առնուին վահանս եւ սուսերս,
եւ լարէին աղեղունս, եւ ուսեալ էին
պատերազմ, քառասուն եւ չորք հա-
զարք եւ եւթն հարեւր եւ վաթսուն,
19 որք ելանէին ի մարտ, Եւ առնէին պա-
տերազմ ընդ Հագարացւոցն եւ ընդ Յու-
րեցւոցն եւ ընդ Նափեսացւոցն եւ ընդ
20 Նադաբացւոցն [6]եւ ընդ Նաբիմացւոցն˝. Եւ
զօրացան ի վերայ նոցա, եւ տուան ի ձեռս
նոցա Հագարացիքն եւ [11]ամենայն խա-
րանք նոցա˝. վասն զի առ Աստուած գո-
չեցին ի պատերազմին՝ եւ լուաւ նո-
21 ցա, զի յուսացան ի նա ։ Եւ գերեցին
[12]զպատրաստութիւն նոցա, ուղտս [13]հինգ
հազար, եւ յոչխարաց երկերիւր եւ յիսուն
հազար, էշս երկուս հազարս, եւ ոգիս ա-
22 ռանց հարեւր հազար. Վասն զի վիրա-
ւորք բազումք անկան, զի [14]ի Տեառնէ
եղեւ պատերազմն. եւ բնակեցին փո-
խանակ նոցա մինչեւ ի գերութիւնն
23 [6]իւրեանց ։ Եւ կէս ցեղին Մանասէի
բնակեաց յերկրին Բասանայ մինչեւ ի
Բաաղերմոն եւ Սանիր, եւ ի լեառնն
Ահերմոնի [6]եւ ի Լիբանան˝. նոքեանք
24 բազմացան ։ Եւ այսոքիկ իշխանք տանց
տոհմից նոցա. Ոփեր եւ Յեսի եւ Ե-
ղիէլ եւ Եզրիէլ եւ Յերեմիա եւ Յովդիա
եւ Իդիէլ, արք զօրաւորք ուժով, արք
անուանիք իշխանք տանց տոհմիցն իւր-
եանց ։
25 Եւ ոչ խտրացանց եղեն յԱստուծոյ հարցն
իւրեանց, եւ պոռնկեցան զհետ աս-
տուածոց օտարաց երկրին զոր եբարձ
26 Աստուած յերեսաց նոցա ։ Եւ յարոյց
Աստուած Իսրայելի զհոգին [15]Փաղաւքայ
արքային Ասորեստանեայց, եւ զհոգին
Թագղաթփաղասարայ արքային [16]Ասու-
րայ, եւ գերեաց զՌուբէն եւ զԳադ˝
եւ զկէս ցեղին Մանասէի, եւ տարաւ
զնոսա ի Քաղա եւ ի Քաբովր [17]առ գե-
տեղերն Գովզանայ, մինչեւ յօրս յայս ։

## ԳԼ. Զ

1 Որդիք Ղեւեայ՝ Գերսոն, Կահաթ եւ
2 Մերարի ։ Որդիք Կահաթու՝ Ամրամ եւ
3 Իսահառ, Քեբրոն եւ Ոզիէլ ։ Եւ որդիք
Ամրամայ՝ Ահարոն եւ Մովսէս եւ Մա-
րիամ. եւ որդիք Ահարոնի՝ Նադաբ եւ
4 Աբիուդ, Եղիազար եւ Իթամար ։ Եւ
Եղիազար ծնաւ զՓենեհէս, Փենեհէս ծնաւ
5 զԱբիսուէ, Աբիսուէ ծնաւ զԲոկկի,

---

[1] Եբր. Որդիք Յովելայ, Սեմայիա՝ որդի նորա, Գոգ՝ որդի նորա, Սեմէի՝ որդի նորա, (5) Միքա՝ որդի նորա, Ռէայա՝ որդի նորա. Բաաղ՝ որդի նորա [2] Եբր. Յէիէլ [3] Եբր. Հագարացիս [4] Եբր. եւ բնակեցին ի խորանս նոցա [5] Եբր. եւ Սափատ [6] Եբր. պակաս [7] Եբր. Յարուայ [8] Եբր. Բուզայ. (15) Աքի որդի [9] Եբր. նոցա, (16) Եւ բնակեցին [10] Եբր. արուարձանս Սարոնայ մինչեւ յելս նոցա ։ (17) Ամենեքին մտին յազգահամար

[11] Եբր. ամենեքին որ ընդ նոսա [12] Եբր. զանասունս [13] Եբր. յիսուն [14] Եբր. յԱստուծոյ [15] Եբր. Փուղայ [16] Եբր. Ասորեստանեայց, եւ գերեաց զՌուբենեանն եւ զԳադեանս [17] Եբր. եւ ի Հարա եւ առ

6 Բոկկի ծնաւ զՕզիա, Օզիա ծնաւ զԱ-
րէա, Արէա ծնաւ զՄարէովթ, Մա-
7 րէովթ ծնաւ զԱմարիա, Ամարիա
8 ծնաւ զԱքիտովբ, Աքիտովբ ծնաւ զՍա-
9 դովկ, Սադովկ ծնաւ զԱքիմաաս, Աքի-
10 մաաս ծնաւ զԱզարիա, Ազարիա ծնաւ
զՅովնան, Յովնան ծնաւ զԱզարիա.
սա էր քահանայ ի տանն Աստուծոյ,
11 զոր շինեաց Սողոմոն յԵրուսաղէմ։ Եւ
ծնաւ Ազարիա զԱմարիա, Ամարիա
12 ծնաւ զԱքիտովբ, Աքիտովբ ծնաւ զՍա-
դովկ, Սադովկ ծնաւ զՍեղղում, Սեղ-
13 ղում ծնաւ զՔեղկիա, Քեղկիա ծնաւ
14 զԱզարիա, Ազարիա ծնաւ զՍարեա,
15 Սարեա ծնաւ զՅովսեդեկ, Եւ Յովսե-
դեկ գնաց ի գերութեանն ընդ Յուդայի
եւ Երուսաղեմի ի ձեռն Նաբուքոդոնո-
սորայ։
16 Որդիք Ղեւեայ՝ Գերսոն, Կահաթ եւ
17 Մերարի։ Եւ այսոքիկ անուանք որդ-
18 ւոցն Գերսոնի՝ Ղոբենի եւ Սեմէի։ Եւ
որդիք Կահաթու՝ Ամրամ եւ Իսահառ,
19 Քեբրոն եւ Օզիէլ։ Որդիք Մերարեայ՝
Մոոլի եւ Մուսի. եւ այսոքիկ տոհմք
Ղեւեայ ըստ ազգին իւրեանց։
20 Գերսոնի՝ [1]Ղոբենայ որդւոյն իւրոյ,
21 Յեթթի որդի նորա, Յովաք որդի նո-
րա, Ադդիու" որդի նորա, Զարա որդի
նորա, Յաթրի որդի նորա։
22 Որդիք Կահաթու՝ [2]Իսահառ որդի նո-
23 րա, Կորխ որդի նորա, Ասիր որդի նո-
րա, Եղկանա որդի նորա, Աբիասափ որ-
24 դի նորա, Ասիր որդի նորա, Թաաթ
որդի նորա, Ուրիէլ որդի նորա, Օզիաս
25 որդի նորա, Սաւուղ որդի նորա։ Եւ
որդիք Եղկանայ՝ Ամաս եւ Աքիմովթ,
26 Եղկանա [3]որդի նորա", Սուփի որդի
27 նորա, Նահաթ որդի նորա, Եղիաբ
որդի նորա, Յերոամ որդի նորա, Եղ-
28 կանա որդի նորա։ Որդիք Սամուելի՝ ան-
դրանիկն նորա Յովէլ եւ երկրորդն Աբիա։
29 Որդիք Մերարեայ՝ Մոոլի, [4]Նաբար.
Ղոբենի որդի նորա, Սեմէի որդի նորա,
30 Օզա որդի նորա, Սամաա որդի նորա,
Անգիա որդի նորա, Ասիա որդի նորա։
31 Եւ սոքա են զորս կացոյց Դաւիթ ի
վերայ երգեցողացն ի տան Տեառն ի դա-
32 դարեցուցանել զտապանակն. Եւ էին
պաշտօնեայք առաջի խորանին տանն
վկայութեան նուագարանօք, մինչեւ շի-
նեաց Սողոմոն զտունն Տեառն յԵրու-
սաղէմ. եւ կացին ի կարգին իւրեանց
33 ի պաշտամանն իւրեանց։ Եւ սոքա են
որ կացին եւ որդիք իւրեանց. Էման
թոռն Սամուելի, ի Կորխայ Կահաթա-
ցի։" Յորդւոյն Կահաթու՝ Էման սաղ-
մոսանուագ, որդի Յովելի, որդւոյ Սա-
34 մուելի, Որդւոյ Եղկանայի, որդւոյ Յե-
րոամայ, որդւոյ Եղիելի, որդւոյ Թով-
35 կեայ, Որդւոյ Սուփեայ, որդւոյ Եղ-
կանայ, որդւոյ Մաաթայ, որդւոյ Ամա-
36 սեայ, Որդւոյ Եղկանայ, որդւոյ Յովէ-
լի, որդւոյ Ազարեայ, որդւոյ Սափա-
37 նայ, Որդւոյ Թաաթայ, որդւոյ Ասի-
րայ, որդւոյ Աբիասափայ, որդւոյ Կոր-
38 խայ, Որդւոյ Իսահառայ, որդւոյ Կա-
հաթու, որդւոյ Ղեւեայ, որդւոյ Իսրա-
39 յելի։ Եւ եղբայր նորա Ասափ, որ կայր
ընդ աջմէ նորա. Ասափ որդի Բարա-
40 քեայ, որդւոյ Սամաայ, Որդւոյ Մի-
քայելի, որդւոյ Բաասեայ, որդւոյ Մեղ-
41 քեայ, Որդւոյ Աթանեայ, որդւոյ Զարեայ,
42 որդւոյ Յադեայ, Որդւոյ [5]Ուրիայ, որդւոյ
43 Զամմայ, որդւոյ Սեմեայ, Որդւոյ Յեթեայ,
44 որդւոյ Գերսոնի, որդւոյ Ղեւեայ։ Եւ
որդիք Մերարեայ եղբարք նոցա ի ձախ-
մէ. Եթան որդի Կիսանայ, որդւոյ Աբ-
45 դեայ, որդւոյ Մաղուքայ, Որդւոյ Ասե-
բեայ, որդւոյ Ամեսսեայ, որդւոյ Քեղ-
46 կեայ, Որդւոյ Ամասեայ, որդւոյ Բաա-
47 նայ, որդւոյ Սեմերայ, Որդւոյ Մոո-
ղայ, որդւոյ Մուսեայ, որդւոյ Մերա-
48 րեայ, որդւոյ Ղեւեայ։ Եւ եղբարք նոցա
ըստ տանց տոհմից իւրեանց՝ Ղեւտացիք,
տուեալք յամենայն ի գործ պաշտաման
խորանին տանն Աստուծոյ։
49 Եւ Ահարոն եւ որդիք նորա ծխէին
խունկս ի վերայ սեղանոյն ողջակիզաց
եւ ի վերայ սեղանոյն խնկոցն, յամե-
նայն ի գործ սրբութեան սրբութեանցն,
քաւել վասն Իսրայելի ըստ ամենայնի
զոր պատուիրեաց Մովսէս ծառայ Աս-
50 տուծոյ։ Եւ սոքա են որդիք Ահարոնի.
Եղիազար որդի նորա, Փենեէս որդի
51 նորա, Աբիսու որդի նորա, Բոկկի որ-
52 դի նորա, Օզիա որդի նորա, Զարա որ-
դի նորա, Մերայովթ որդի նորա, Ամա-
53 րիա որդի նորա, Աքիտովբ որդի նորա,
Սադովկ որդի նորա, Աքիմաաս որդի նորա։

[1] Եբր. Ղոբեն որդի նորա, Յեթ որդի նորա, Զամ-
մա որդի նորա, (21) Յովաք որդի նորա. Ադդով
[2] Եբր. Ամինադաբ [3] Եբր. (26) Որդիք Եղկանայ
[4] Յեբր. պակասէ
[5] Եբր. Եթանայ

54 Եւ այսոքիկ են բնակութիւնք նոցա ի
գեօղս իւրեանց, ի սահմանս իւրեանց՝
որդւոցն Ահարոնի՝ ի տոհմին Կահա-
թու. վասն զի [1]նոա եղեւ խիստ իշխան"։
55 Ետուն նոցա զՔեբրոն յերկրին Յուդայ,
եւ [2]զզատուցեալսն նորա շուրջ զնո-
56 վաւ. Եւ զգաշտն քաղաքին, եւ զգեօղն
նորա ետուն Քաղեբայ որդւոյ Յեփո-
57 նեայ։ Եւ որդւոցն Ահարոնի ետուն
զքաղաքս ապաւինութեանցն, զՔեբ-
րոն եւ զՂոբնա, եւ շուրջ զզատու-
ցեալսն նորա. եւ զՅեթեր՝ եւ [3]զզա-
տուցեալսն նորա, եւ" զԻսթամով՝ եւ
58 զզատուցեալսն նորա, Եւ զԵղոն՝ եւ
զզատուցեալսն նորա, եւ զԴաբիր՝ եւ
59 զզատուցեալսն նորա, Եւ զԱսան՝ եւ
զզատուցեալսն նորա, եւ զԲեթսամիւս՝
եւ զզատուցեալսն նորա, [3]եւ զԲեթեր՝
60 եւ զզատուցեալսն նորա։" Եւ ի ցեղէն
Բենիամինի, զԳաբա՝ եւ զզատուցեալսն
նորա, եւ զԳաղեմէթ՝ եւ զզատուցեալսն
նորա, եւ [3]զՂաբեէ՝ եւ զզատուցեալսն
նորա," զԱնաթովթ՝ եւ զզատուցեալսն
նորա, [3]զԱնքով՝ եւ զզատուցեալսն
նորա." ամենայն քաղաքք [4]չորեքտա-
սան, քաղաքք տոհմից իւրեանց։
61 Եւ որդւոցն Կահաթու մնացելոց ըստ
տոհմից իւրեանց, ի ցեղէ կիսոյ ցեղին
Մանասէի՝ վիճակաւ քաղաքս տասն։
62 Եւ որդւոցն Գերսոնի ըստ տոհմից իւր-
եանց, ի ցեղէն Իսաքարայ եւ ի ցեղէն
Ասերայ եւ ի ցեղէն Նեփթաղիմայ եւ ի
ցեղէն Մանասէի ի Բասան՝ քաղաքս ե-
րեքտասան։
63 Եւ որդւոցն Մերարեայ ըստ տոհմից
իւրեանց, ի ցեղէն Ռուբենի եւ ի ցե-
ղէն Գադայ եւ ի ցեղէն Զաբուղոնի,
վիճակաւ քաղաքս երկոտասան։
64 Եւ ետուն որդիքն Իսրայելի Ղեւտաց-
ւոցն զքաղաքսն, եւ շուրջ զզատու-
65 ցեալսն նոցա։ Եւ ետուն վիճակաւ ի ցեղէ
որդւոցն Յուդայ եւ ի ցեղէ որդւոցն Շմա-
ւոնի եւ ի ցեղէ որդւոցն Բենիամինի,
զքաղաքսն զայնոսիկ զորս կոչեցին յա-
66 նուանէ։ Եւ տոհմից որդւոցն Կահաթու
եղեն քաղաքք սահմանաց իւրեանց ի ցե-
67 ղէն Եփրեմի։ Եւ ետուն նոցա զքա-
ղաքսն ապաւինի, զՍիւքեմ եւ շուրջ
զզատուցեալսն նորա ի լերինն Եփրեմի,
եւ զԳազեր՝ եւ զզատուցեալսն նորա,
68 Եւ զՅեկնամ՝ եւ զզատուցեալսն նորա,
եւ զԲեթորոն՝ եւ զզատուցեալսն նորա,
69 Եւ զԵղոմն՝ եւ զզատուցեալսն նորա,
եւ զԳեթրեմոն՝ եւ զզատուցեալսն նորա։
70 Եւ ի կիսոյ ցեղէն Մանասէի զԵներ՝ եւ
զզատուցեալսն նորա, եւ զԻբղաամ՝
եւ զզատուցեալսն նորա, ըստ տոհմից
որդւոցն Կահաթու մնացորդաց։
71 Որդւոցն Գերսոնի [3]ըստ տոհմից իւր-
եանց" ի կիսոյ ցեղէն Մանասէի, զԳո-
ղոմն ի Բասան՝ եւ շուրջ զզատուցեալսն
նորա, զԱստարովթ՝ եւ զզատուցեալսն
72 նորա։ Եւ ի ցեղէն Իսաքարայ՝ զԿեդէս
եւ զզատուցեալսն նորա, [5]զԴադիր՝ եւ
73 զզատուցեալսն նորա, Համովթ՝ եւ
զզատուցեալսն նորա, զԱնամ՝ եւ զզա-
74 տուցեալսն նորա. Եւ ի ցեղէն Ասերայ՝
զՄասաղ եւ զզատուցեալսն նորա,
զԱւդոն՝ եւ զզատուցեալսն նորա,
75 ԶՅակակ՝ եւ զզատուցեալսն նորա,
զՀռովբ՝ եւ զզատուցեալսն նորա.
76 Եւ ի ցեղէն Նեփթաղիմայ՝ զԿեդէս ի
Գալիլեա՝ եւ զզատուցեալսն նորա,
[6]զՔամով եւ զզատուցեալս նորա, զԿա-
րիաթեմ՝ եւ զզատուցեալսն նորա։
77 Եւ որդւոցն Մերարեայ մնացորդաց,
ի ցեղէն Զաբուղոնի՝ [3]զՅեկնամն եւ
զզատուցեալսն նորա, զԿադէս՝ եւ զզա-
տուցեալսն նորա," զՀռեմոն՝ եւ զզա-
տուցեալսն նորա, զԹաբովր՝ եւ զզա-
78 տուցեալսն նորա։ Եւ յեզերն Յորդա-
նանու Երիքովի, [7]յարեւմտից Յորդա-
նանու, ի ցեղէն Ռուբենի, զԲոսոր յա-
նապատին եւ զզատուցեալսն նորա,
եւ զՅասա եւ զզատուցեալսն նորա,
79 Եւ զԿադեմովթ՝ եւ զզատուցեալսն նորա,
եւ զՄեփաաթ՝ եւ զզատուցեալսն նորա։
80 Եւ ի ցեղէն Գադայ, զՌամովթ ի Գա-
ղաադ՝ եւ զզատուցեալսն նորա, եւ
զՄանայեմ՝ եւ զզատուցեալսն նորա,
81 Եւ զԵսեբոն՝ եւ զզատուցեալսն նորա,
եւ զՅազեր՝ եւ զզատուցեալսն նորա։

## ԳԼ. Է

1 Եւ սոքա են որդիք Իսաքարայ. Թով-
ղա եւ Փուա եւ Յասուբ եւ Սամբրամ,
2 չորք։ Եւ որդիք Թովղայ՝ Ոզիա եւ Հռա-
փայիա եւ Յերիէլ եւ Յեմու եւ Յե-
բամ եւ Սամուէլ, իշխանք ըստ տանց

---

[1]Եբր. Նոցա եղեւ վիճակն առաջին [2]Եբր. զարուարձանսն. այսպէս և ի ներքոյ [3]Եբր. պակասէ [4]Եբր. երեքտասան

[5]Եբր. զԴաբարաթ [6]Եբր. զՀամմոթ [7]Եբր. յարեւելից

տոհմից իւրեանց . [1]եւ Թուղ եւ Անան՝՝,
զօրաւորք ուժով ըստ ազգին իւրեանց .
եւ [2]գումարն նոցա յաւուրս Դաւթայ՝
քսան եւ երկու հազարք եւ վեց հա-
3 րեւր ։ Եւ որդիք Ոզիայ՝ Յեզերիա , եւ
որդիք Յեզերեայ՝ Միքայէլ եւ Աբդիաս
եւ Յովէլ եւ Յեսիաս . [3]իշխանք ամենեք-
4 եան ։ Եւ ընդ նոսա ըստ ազգին իւրեանց,
ըստ տանց տոհմից իւրեանց , զօրաւորք
կարգեալք ի պատերազմ՝ երեսուն եւ վեց
հազար . վասն զի բազմացուցին կանայս եւ
5 որդիս ։ Եւ եղբարք նոցա յամենայն տոհմն
Իսաքարայ զօրաւորք ուժով , ութսուն
եւ եւթն հազար՝ թիւ նոցա ամենեցուն ։
6 Որդիք Բենիամենի՝ Բաղէ եւ Բոքոր
7 եւ Ադիէլ , երեք ։ Սոքա են որդիք Բա-
ղեայ՝ Ասեբոն եւ Ոզիա եւ Ոզիէլ եւ Ե-
րեմովթ եւ Ուրի , հինգ . իշխանք տանց
տոհմից իւրեանց զօրաւորք ուժով . եւ
թիւ նոցա քսան եւ երկու հազարք եւ
8 երեսուն եւ չորք ։ Եւ որդիք Բոքորեայ՝
Զամարիաս եւ Յովաս եւ Եղիազար եւ
Եղիովէ եւ Ամրի եւ Երիմովթ եւ
Աբիու եւ Անաթովթ եւ Եղմեթեմ . ա-
9 մենեքեան սոքա որդիք Բոքորեայ , Իշ-
խանք տանց տոհմիցն իւրեանց ըստ ազ-
գին իւրեանց զօրաւորք ուժով . եւ թիւ
10 նոցա քսան հազար եւ երկերիւր ։ Եւ
որդիք Ադիելի՝ Բաղաան , եւ որդիք Բա-
ղաանու՝ Յէուս եւ Բենիամին եւ Աւովդ
եւ Քանաան եւ Զեթան եւ Թարսիս եւ
11 Աքիսաար ։ Ամենեքեան սոքա որդիք
Ադիելի , իշխանք տոհմիցն իւրեանց զօ-
րաւորք ուժով , եւթնեւտասն հազար եւ
երկերիւր , որք ելանէին զօրութեամբ
12 պատերազմել ։ Եւ Սափիմ եւ [4]Ափիմ եւ
որդիք Սովրայայ՝ Սոբու , եւ որդի նո-
րա Յաթեր՝՝ ։
13 Որդիք Նեփթաղիմայ՝ Յասիէլ եւ Գով-
նի եւ [5]Սահառ եւ Սեղղում . որդիք Բաղղայ ։
14 Որդիք Մանասէի՝ Եսրիէլ՝ զոր ծնաւ
[6]նմա հարճն իւր Ասորի . եւ ծնաւ զՄա-
15 քիր զհայրն Գաղաադու . Եւ Մաքիր
առ կին Սափինայ եւ Սեփինայ, անուն քեռ
նորա Մաաքա եւ անուն երկրորդին Սա-
փաադ . եւ ծնան Սափաադայ՝՝ դստերք ։
16 Եւ ծնաւ Մաաքա կին Մաքիրայ որդի,
եւ կոչեաց զանուն նորա Փարէս, եւ ա-
նուն եղբօր նորա [7]Սորոմ, եւ որդւոյ նորա
17 Ուղամա՝՝ ։ Որդի Ուղամայ՝ Բադիմ . սո-
քա են որդիք Գաղաադայ , որդւոյ Մա-
18 քիրայ որդւոյ Մանասէի . Եւ քոյր նո-
րա Մաղէքէթ ծնաւ զԻսուդ եւ զԱբիե-
19 զեր եւ զՄոողա . Եւ էին որդիք Սե-
միդայ՝ Ային եւ Սիւքեմ եւ Ղակէիա եւ
Անիամ ։
20 Եւ որդիք Եփրեմի՝ Սութաղա եւ Բա-
րադ որդի նորա , եւ Թաաթ որդի նո-
րա , եւ Եղիադ որդի նորա , [8]Նոմեէ որ-
21 դի նորա , Զաբեդ որդի նորա , Սութա-
ղա որդի նորա , Եզեր [9]որդի նորա , եւ
Եղէադ որդի նորա՝՝ . եւ սպանին զնո-
սա արք Գեթայիք ծնեալք յերկրին ,
վասն զի իջին առնուլ զանասունս նո-
22 ցա . Եւ սուգ առ Եփրեմ հայրն նոցա
յաւուրս բազումս , եւ եկին եղբարք
23 նորա մխիթարել զնա ։ Եւ եմուտ առ
կինն իւր , յղացաւ եւ ծնաւ որդի , եւ
կոչեաց զանուն նորա Բարիա . վասն զի
[10]ի չար ժամանակի ծնաւ , ասէ , ի տան
24 իմում՝՝ . Եւ դուստր նորա [11]Սէէրա . եւ
շինացորդօքն այնորիւք՝՝ շինեաց զԲե-
թորոն ներքին եւ [12]զվերին ։ Եւ որդիք
25 Ոզանայ՝՝ Սէէրա ։ Եւ Հռափայէ որդի
նորա , եւ Հռասէփ , եւ Թաղէ որդի
26 նորա , Թաան որդի նորա , Եւ Եզոդան
որդի նորա , Ամիուդ որդի նորա , Եղի-
27 սամա որդի նորա , Նուն որդի նորա ,
28 Յեսու որդի նորա ։ Եւ կալուածք նոցա
եւ բնակութիւն իւրեանց ի Բեթէլ , եւ
գեղք նորին [13]յարեւելս . Գազեր՝՝ եւ
գեղք նորին , եւ Սիւքեմ եւ գեղք
նորին մինչեւ ի Գազա եւ ի գեղսն նո-
29 րա , Եւ մինչեւ ի սահմանս որդւոցն Մա-
նասէի , Բեթսան եւ գեղք նորա , Թա-
նաք եւ գեղք նորա , [14]Գազաադ եւ
գեղք նորա՝՝, Մակեդդով եւ գեղք
նորա , Դովր եւ գեղք նորա . ի նոսա
բնակեցան որդիքն Յովսեփու՝ որդւոյ
Իսրայելի ։
30 Որդիք Ասերայ՝ Յեմնա [14]եւ Յասուր՝՝
եւ Յեսուա եւ Յեսու եւ Բարիա եւ

[1] Եբր. Թողղայ [2] Եբր. Թիւք [3] Եբր. Հինգ իշխանք [4] Եբր. Որիմ՝ որդիք Իրեայ , Հուսիմ՝ որդի Աքերայ [5] Եբր. Յասեր [6] Կամ. Նմա կին Նորա. (Եւ հարճ նորա ասորի ծնաւ զՄաքիր. զհայրն Գաղաադու ։ (15) Եւ Մաքիր առ կին որոյ անուն Մաաքա , քոյր Ոփփիմայ եւ Սուփփիմայ ։) Եւ անուն երկրորդին Սաղպաադ, և եղեն Սաղպաադայ

[7] Եբր. Սարէս . որդիք նորա Ուղամ եւ Հռոկամ [8] Եբր. և Թաաթ [9] Եբր. և Եզէադ [10] Եբր. չարիք եղեն ի տան նորա [11] Եբր. էր Սէէրա. եւ սա [12] Եբր. զվերին, եւ զՈւզէն [13] Եբր. յարեւելս՝ Նաարա, և յարեւմուտս՝ Գազեր [14] Եբր. պակաս

31 Սարա քոյր նոցա ։ Եւ որդիք Բարեայ՝
Քաբեր եւ Մեղքիէլ . նա ինքն է հայր
32 [1]Զերեթայ . Եւ Քաբեր ծնաւ զՑափա-
ղէտ եւ զՍովմեր եւ զՔովթամ եւ զՍով-
33 ղամ զքոյրն նոցա ։ Եւ որդիք Ցափա-
ղետայ՝ Բեսեքի, Բամայէլ եւ Ասիթ .
34 սոքա էին որդիք Ցափաղետայ ։ Եւ որ-
դիք Սովմերայ՝ Աքիու, Հոռագա եւ Ո-
35 բա եւ Արամ ։ Եւ որդիք Եղամայ [2]եղ-
բօրն Սովփարայ”, Ցամանա եւ Սեղէս եւ
36 Ամաազ ։ Որդիք Սովփարայ [3]Առնափար
37 եւ Սուաղ”, Եւ Բարի եւ Ցեմրա, Բա-
սար եւ Ովդ եւ Սեմա եւ Սաղիսա եւ
38 Ցեթեր եւ Բեէրա ։ Եւ որդիք Ցեթե-
39 րայ՝ Ցափինա եւ Փասփա եւ Արա ։ Եւ
որդիք Ովղայ՝ Որէք եւ Անիէլ եւ Հաա-
40 յիէլ ։ Ամենեքեան սոքա որդիք Ասերայ,
ամենեքեան իշխանք եւ պետք տոհ-
միցն, ընտիրք զօրաւորք ուժով, իշ-
խանք եւ առաջնորդք . եւ թիւ նոցա
ի մարտ պատերազմի՝ արք քսան եւ վեց
հազարք ։

Գլ. Ը

1 Եւ Բենիամին ծնաւ զԲաղէ զանդրա-
նիկ իւր, եւ զԱսբէղ զերկրորդն, եւ
2 զԱրա երրորդ, Եւ զՆովա չորրորդ, եւ
3 զՀափա հինգերորդ ։ Եւ էին որդիք
4 Բաղեայ՝ Արեդ եւ Գերա եւ Աբիուդ Եւ
5 Աբիսուէ եւ Նեէման[4] Եւ Գերա եւ Սով-
6 փան եւ Քիրամ [5]եւ Սովիմ”։ Սոքա են
որդիք Ովդայ, եւ սոքա իշխանք տոհ-
միցն . բնակէին ի Գաբա, եւ գերեցին
7 զնոսա ի Մանաքաթ . Նեէման եւ Ա-
քիա եւ Գերա, նա ինքն է [6]Եգղամ .
8 եւ ծնաւ զՈզա եւ զԱքիադ . Եւ [7]Սաա-
րիմ ծնաւ զՄովամ, յետ արձակելոյն
9 զնա, եւ Ովսիմ եւ Բաարա”։ Եւ Ադա
կին նորա ծնաւ նմա զՑովբաբ եւ զԱա-
10 բիա եւ զՄովսա եւ զՄեղքամ Եւ զՑեուս
եւ զՍեքիա եւ զՄարմա . սոքա իշխանք
11 տոհմիցն [5]Ցովսիմայ ։ Եւ ծնաւ [8]Մեով-
12 սիմ զԱբիտովբ եւ զԵղփաղա ։ Եւ որ-
դիք Եղփաղայ՝ Եբեր եւ Միսայէլ, Սե-
մեր, եւ նա շինեաց զՈւնով եւ զՂովդ,
13 եւ զգեղս նորա . Եւ զԲարիգա եւ զՍա-
մա . սոքա են իշխանք տոհմից որ բնա-
կէին յԵղամ, եւ սոքա հալածեցին զբնա-
14 կիչսն Գեթայ ։ Եւ եղբարք նոցա՝ Սով-
15 սէք եւ Ցարիմոթ, Եւ Զաբադիա եւ Ա-
16 րովդ եւ Ադեր Եւ Միքայէլ եւ Ցեսփաք
17 եւ Ցովաքա, որդիք Բարիգայ ։ Զա-
բադիա եւ Մոսողամ եւ Ազակի եւ
18 Քաբեր Եւ Ցեսամարի եւ Եզլիա եւ
19 Ցովբաբ որդիք Եղփաղայ ։ Եւ Ցակիմ
20 եւ Զէքրի եւ Զաբդի Եւ Եղիովնէ եւ
21 Սաղթի եւ Եղիէլ Եւ Ադայիա եւ
[5]Բերիգա եւ” Բարեա եւ [9]Սամարիամ ։
22 Որդիք Ամարեայ,” Ցեսփան եւ Եբեր
23 եւ Եղիէլ Եւ Աբդոն եւ Զեքրի եւ Անան
24 Եւ Անանիա եւ [5]Ամբրի եւ” Եղամ եւ
25 Անաթովթիա [5]եւ Աթին” Եւ Ցեփա-
դիա եւ Փանուէլ՝ որդիք Սովսեկայ ։
26 Սամսարիա եւ Սարայիա եւ Գոթողիաս
27 Եւ Արասիաս եւ Հեղիաս եւ Զեքրի,
28 որդիք Երոմայ ։ Սոքա իշխանք տոհմից
ըստ ազգին իւրեանց առաջնորդք, եւ
սոքա բնակեցան յԵրուսաղէմ ։
29 Եւ ի Գաբաւոն բնակեաց հայրն Գա-
բաւոնի, եւ անուն կնոջ նորա Մաա-
30 քա ։ Եւ որդիք նորա՝ անդրանիկ Ա-
դոն եւ Ցեսուր եւ Կիս եւ Բահաղ [5]եւ
31 Նէր” եւ Նադաբ Եւ Գեդուր, եւ [10]եղ-
32 բարք նորա” եւ Զաքար ։ Եւ Մակեղովթ
[5]որ ծնաւ զՍամաա . եւ սոքա դէմ յան-
դիման եղբարցն իւրեանց բնակեցան
յԵրուսաղէմ ընդ եղբարսն իւրեանց ։
33 Եւ Նէր ծնաւ զԿիս, եւ Կիս ծնաւ
զՍաւուղ, եւ Սաւուղ ծնաւ զՑովնա-
թան եւ զՄեղքիսուէ եւ զԱբինադաբ
34 եւ [11]զԻսամայէլ ։ Եւ Ցովնաթան ծնաւ
[12]զՄեմփիբաաղ, եւ Մեմփիբաաղ” ծնաւ
35 զՄիքա . Եւ որդիք Միքայի՝ Փիդոն եւ
36 Մաղովք եւ Թարէ եւ Աքազ ։ Եւ Ա-
քազ ծնաւ զՑովդիգա, եւ Ցովդիգա ծնաւ
զԳաղեմաթ եւ զԱզեմովթ եւ զԶամբ-
37 րի, եւ Զամբրի ծնաւ զՄոսա, Եւ Մո-
սա ծնաւ զԲանաա եւ զՌափա որդի
նորա, եւ զԵղէասա որդի նորա, եւ զԵ-
38 սէլ որդի նորա ։ Եւ Եսելի վեց որդիք .
եւ այսոքիկ անուանք նոցա, Եզրիկամ
[13]անդրանիկ նորա”, եւ Իսմայէլ եւ Սաա-
րիա եւ Աբդիա եւ Անան . ամենեքեան
39 սոքա որդիք Եսելի ։ Եւ որդիք Եսեղ-

---

[1]Եբր. Բարսաիթայ [2]Եբր. եղբօրն նորա, Սովփա [3]Եբր. Սուա եւ Առնափար եւ Սուաղ [4]Եբրայեցին յաւելու, եւ Աքուէ [5]Յեբր. պակասէ [6]Կամ, որ գերեաց զնոսա [7]Եբր. Սաարիմ ծնաւ որդիս ի դաշտին Մովաբու, յետ արձակելոյ զնոսա . զՈվսիմ եւ զԲաարա կանայս իւր [8]Եբր. յՈվսիմայ

[9]Եբր. Սամարաթ, որդիք Սեմէեայ [10]Եբր. Աքիով [11]Եբր. զԵսբաաղ [12]Եբր. զՄերիբաաղ և Մերիբաաղ [13]Կամ, Բոքերու

կանայ եղբօր նորա, Ուղամ անդրանիկ
նորա, եւ Աւաս երկրորդ, եւ Եղիփա-
40 ղէտ երրորդ։ Եւ էին որդիք Ուղամայ
զօրաւորք՝ արք ուժոյ, որք լարէին ա-
ղեղունս. եւ բազմացուցին որդիս եւ
զորդիս որդւոյ, հարեւր եւ [1]յիսուն. ա-
մենեքեան սոքա յորդւոցն Բենիամենի։

## ԳԼ. Թ

1 Եւ ամենայն Իսրայէլ ըստ թուոյն իւ-
եանց գրեալք սոքա ի գիրս թագաւո-
րացն Իսրայելի եւ Յուդայ, [2]համդերձ
բնակելովքն" ի Բաբելոն՝ վասն մեղացն
իւրեանց։
2 Եւ որ բնակեալ էին յառաջին կա-
լուածս իւրեանց ի քաղաքսն Իսրայե-
լի, քահանայք եւ Ղեւտացիք, [3]որք
3 տուեալ էին". Յերուսաղէմ բնակեցան
յորդւոցն Յուդայ եւ յորդւոցն Բենիա-
մինի եւ յորդւոցն Եփրեմի եւ Մանա-
4 սէի։ Եւ Գովթի՝ որդի Ամիուդայ, որդ-
ւոյ Ամարեայ, որդւոյ [4]Փարեսի, որդւոյ
5 Յուդայ։ Եւ ի Սեղոմայ՝ անդրանիկ նո-
6 րա Ասեա, եւ որդիքն նորա։ Եւ յորդ-
ւոցն Զարայի, Յէիէլ եւ եղբարք նորա,
7 վեց հարեւր եւ իննսուն. Եւ յորդւոցն
Բենիամինի՝ Սաղովմ որդի Մոսոմայ,
8 որդւոյ Ոդուեայ, որդւոյ Ասանուայ. Եւ
Յեբնա որդի Յերեմայ, եւ Եղա որդի
Ոզիայ, որդւոյ Միքրայ. եւ Մոսողոմ
որդի Սափատայ, որդւոյ Ռագուելի,
9 որդւոյ Յեբանայ. Եւ եղբարք նոցա ըստ
ազգին իւրեանց, ինն հարեւր յիսուն
եւ վեց. ամենեքեան արք պետք տոհ-
մին իւրեանց, ըստ տանց ազգին իւրեանց։
10 Եւ ի քահանայիցն՝ Յովդայէ եւ Յո-
11 վարիբ եւ Աքին Եւ Ազարիաս՝ որդի
Քեղկեայ, որդւոյ Մոսողոմայ, որդւոյ
Սադովկայ, որդւոյ Մարիովթայ, որդ-
ւոյ Աքիտովբայ. առաջնորդ տանն Ա-
12 տուծոյ. Եւ Ադլիաս՝ որդի Յերեմեայ,
որդւոյ Փասուրայ, որդւոյ Մեղկեայ. եւ
Մասէ՝ որդի Ադիելի, որդւոյ Եզրայ,
որդւոյ Մոսողոմայ, [5]եւ Ղասմովթ՝ որ-
13 դի Ասերայ". Եւ եղբարքն նոցա, իշ-
խանք տանց տոհմից հազար եւ եւթն
հարեւր եւ [6]յիսուն. արք զօրաւորք ու-
ժոյ ի գործ պաշտաման տանն Աստուծոյ։
14 Եւ ի Ղեւտացւոցն՝ Սամեա որդի Ա-
սովբայ, որդւոյ Եզրիկամայ, որդւոյ Ա-
սաբեայ, [7]որդւոյ որդւոցն" Մերարեայ.
15 Եւ Բագբագ եւ Արէս եւ Գովղէզ եւ
Մաթանիաս որդի Միքայի, որդւոյ Զեք-
16 րեայ, որդւոյ Ասափայ։ Եւ Աբդիաս որ-
դի Սամեայ, որդւոյ Գովղեղայ, որդւոյ
Իդիթունայ. եւ Բարաքիաս որդի Ա-
սայի, որդւոյ Եղկանայ, որ բնակէր ի
17 գեղսն Նետոփաթայ։ Եւ դռնապանք՝
Սադղում եւ Ակուբ եւ Տէղման, Եման,
եւ եղբարք նոցա, Սաղղում իշխան։
18 Մինչեւ ցայս վայր, ի դրան թագաւո-
րին յարեւելս. այսոքիկ են [8]դրունք
19 բանակաց որդւոցն Ղեւեայ։ Եւ Սադղում
որդի Կովրեայ, որդւոյ Աբիասափայ, որդ-
ւոյ Կորխայ. եւ եղբարք նորա ի տանէ
հօրն իւրեանց, Կորխացիքն ի վերայ
գործոյ սպասուն, որք պահէին զպահ-
պանութիւնս խորանին՝ ինքեանք եւ
հարք իւրեանց ի բանակին Տեառն, եւ
20 պահէին զմուտն։ Եւ Փենեէս որդի Ե-
ղիազարու իշխան էր ի վերայ նոցա [9]ա-
21 ռաջի Տեառն, եւ նոքա" ընդ նմա։ Զա-
քարիաս որդի Մասեղամայ՝ դռնապան
22 դրան խորանին վկայութեան։ Ամենե-
քեան [10]ընտիրք ի դրունս", երկերիւր եւ
երկոտասան. սոքա [11]էին ի սրահսն նո-
ցա, եւ թիւն իւրեանց". եւ զսոսա կա-
ցոյց Դաւիթ եւ Սամուէլ տեսանողն
23 [12]հաւատարմութեամբն նոցա"։ Սոքա եւ
որդիքն իւրեանց էին ի վերայ դրանց
տանն Տեառն, ի տան խորանին [13]որք
24 պահէին" ի չորեսին կողմանս. [14]դրանն՝
յարեւելս եւ ի ծովակողմն, ի հիւսիսի
25 եւ ի հարաւ։ Եւ եղբարքն նոցա [15]ի սրահսն
իւրեանց, ի մտանելն յեւթն աւուրսն,
ի ժամանակաց ի ժամանակս՝ համդերձ
26 նոքօք"։ Վասն զի հաւատարմութեամբ
էին չորք զօրաւորք [16]դրանցն, որ էին
Ղեւտացիք ի վերայ տանց շտեմարա-
27 նացն եւ գանձուց տանն Աստուծոյ, Եւ
[17]բանակէին, վասն զի նոցա էր պահ-

[1] Եբր. լիսուն [2] Եբր. վարեցան ի գերութիւն
[3] Եբր. և Նաթանայիմք. (տես Նեեմ. Է. 60։) [4] Եբր.
Իմրեայ, որդւոյ Բանեայ, յորդւոցն Փարեսի
[5] Եբր. որդւոյ Մեսեղամովթայ, որդւոյ Իմմերայ
[6] Եբր. վաթսուն

[7] Եբր. յորդւոցն [8] Եբր. դռնապանք [9] Եբր.
յառաջագոյն. Տէր էր [10] Եբր. դռնապանք
ընտիր [11] Եբր. գրեցան յազգահամարի ի գեղս
իւրեանց [12] Եբր. ի պաշտաման իւրեանց [13] Եբր.
ի պահպանութիւն [14] Եբր. կային դռնապանք
[15] Եբր. որ ի գեղս իւրեանց՝ գային ի ժամանակաց
ի ժամանակս, եւթն եւթն աւուրս լինել ընդ
նոսա [16] Եբր. դռնապանք [17] Եբր. ագանէ-
ին շուրջ զտամբն Աստուծոյ

պահուեստին. եւ նոքա էին ի վերայ
բանալեացն, ընդ առաւօտս առաւօտս
28 ¹բանալին զդրունս տաճարին"։ Եւ ի նո-
ցանէ ի վերայ սպասուց պաշտամանն.
վասն զի թուով մուծանէին զսպասն եւ
29 թուով հանէին։ Եւ ի նոցանէ կային ի
վերայ ²կահի սրբութեանցն եւ նաշհոյն
եւ գինւոյ եւ իւղոյ եւ կնդրկին եւ ա-
30 լոց խնկոցն։ Եւ յորդւոց քահանայիցն
31 էին իւղեփեցք իւղոյն եւ խնկոցն։ Մա-
տաթիաս ի Ղեւտացւոցն, նա էր անդրա-
նիկն Սաղղումայ Կորխացւոյ, ³հաւա-
տարմութեամբ ի վերայ գործոյ զոհիցն
32 եւ տապակի մեծի քահանայինն։ Եւ Բա-
նէաս Կահաթացի յեղբարցն իւրոց" ի
վերայ հացին առաջաւորութեան՝ պատ-
33 րաստել շաբաթէ ի շաբաթ։ Եւ նոքա
սաղմոսանուագք, իշխանք տոհմիցն
Ղեւտացւոց, կարգեալք ի սպաս ա-
ւուրցն. վասն զի ի տուէ եւ ի գիշերի
34 էին ի գործն։ Սոքա իշխանք տոհմիցն
Ղեւտացւոց, ըստ ազգին իւրեանց իշ-
խանք. եւ սոքա բնակեցան յԵրուսաղէմ։
35 Եւ ի Գաբաւոն բնակեաց հայրն Գաբա-
ւոնի Յեէլ, եւ անուն կնոջ նորա Մաաքա,
36 Եւ որդի նորա անդրանիկ Աբդոն եւ Ցա-
սիր եւ Կիս եւ Բաաղ եւ Ներ եւ Նադաբ
37 Եւ Գեդոր եւ ⁴եղբարք Զաքուրայ՝ Այխոն
38 եւ Զեքրի" եւ Մակեղովթ։ Եւ Մակե-
ղովթ ծնաւ զՍամաա. եւ սոքա ⁵ի մէջ
եղբարց իւրեանց բնակեցին յԵրուսաղէմ
ընդ եղբարսն իւրեանց։
39 Եւ Ներ ծնաւ զԿիս, եւ Կիս ծնաւ
զՍաւուղ, եւ Սաւուղ ծնաւ զՅովնա-
թան եւ զՄելքիսուէ եւ զԱբինադաբ
40 եւ ⁶զԲաաղ։ Եւ որդի Յովնաթանու
41 ⁷Մեմփիբաաղ, ծնաւ զՄիքա։ Եւ որ-
դիք Միքայի Փիթոն եւ Մաղովք եւ
42 Թարա. Եւ ⁸Բաալ ծնաւ զՅովադա, եւ
Յովադա" ծնաւ զԳաղէմեթ եւ զԱզա-
43 մովթ, եւ ⁹Զամրի ծնաւ զՄոսա. Եւ
Մոսա ծնաւ ¹⁰զԲանաա, զԱփա" որդի նո-
րա, զԵղէասա որդի նորա, զԵսէլ որդի
44 նորա։ Եւ Եսէլի որդիք վեց, եւ այսոքիկ

¹Յեբր. դռնակ ²Եբր. կահերն և ի վերայ ամենայն կահի ³Եբր. պաշտօնեայ ի վերայ գործոյ տապակացն։ (32) Յորդւոցն Կահաթացւոց յեղբարց նոցա՝ ⁴Եբր. Աքիով եւ Զաքարիա ⁵Եբր. յանդիման ⁶Եբր. զԵսբաաղ ⁷Եբր. Մերիբաաղ, եւ Մերիբաաղ ⁸Եբր. Աքազ. (42) Եւ Աքազ ծնաւ զՅաքարա, և Յարարա ⁹Եբր. զԶամբրի. և Զամբրի ¹⁰Եբր. զԲանաա և զՌափա

անուանք նոցա. ¹¹Եզրիկամ անդրանիկ
նորա". եւ Իսմայէլ եւ Սաարիա եւ Աբ-
դիա եւ ¹Ամարիա եւ" Անան. սոքա որ-
դիք ¹²Ասիելի։

Գլ. Ժ

1 Եւ ¹³այլազգիք պատերազմեցան ընդ Իս-
րայէլի, եւ ¹⁴փախեան յերեսաց այլազ-
գեացն, եւ անկան վիրաւորք ի լերինն
2 Գեղբուայ։ Եւ պնդեցան այլազգիքն
զհետ Սաւուղայ եւ զհետ որդւոցն նո-
րա, եւ հարին այլազգիքն զՅովնաթան
եւ զԱբինադաբ եւ զՄելքիսուէ զորդիսն
3 Սաւուղայ։ Եւ ծանրացաւ պատերազմն
ի վերայ Սաւուղայ, եւ գտին զնա ա-
ղեղնաւորք աղեղամբք ¹եւ ցաւոք",
4 եւ ¹⁵վտանգեցաւ յաղեղանցն"։ Եւ ասէ
Սաւուղ ցկապարճակիրն իւր, Զգեա
զսուր քո եւ խոցեա զիս զովաւ, մի
գուցէ եկեսցեն անթլփատքն այնոքիկ
եւ խաղասցեն զինեւ. եւ ոչ կամեցաւ
կապարճակիրն նորա, վասն զի երկեաւ
յոյժ. եւ առ Սաւուղ զսուրն, եւ ան-
5 կաւ ի վերայ նորա։ Եւ ետես կապար-
ճակիրն նորա եթէ մեռաւ Սաւուղ,
անկաւ եւ նա ի վերայ սրոյն իւրոյ եւ
6 մեռաւ։ Եւ մեռաւ Սաւուղ եւ երեքին
որդիքն իւր ¹յաւուր յայնմիկ", եւ ա-
մենայն տուն նորա միանգամայն մեռանի։
7 Եւ ետես ամենայն այր Իսրայէլի որք
¹⁶ի հանդիպանն էին, եթէ փախեաւ
Իսրայէլ եւ եթէ մեռաւ Սաւուղ եւ որ-
դիք նորա, թողին զքաղաքս իւրեանց
եւ փախեան, եւ եկին այլազգիքն եւ
բնակեցան ի նոսա։
8 Եւ եղեւ ի վաղիւն եկին այլազգիքն
կողոպտել զվիրաւորսն, ¹եւ գտին զՍա-
ւուղ եւ զորդիս նորա անկեալս ի լե-
9 րինն Գեղբուայ. Մերկացուցին զնա,
եւ առին զգլուխ նորա եւ զզէն նորա,
եւ առաքեցին յերկիրն այլազգեաց շուր-
ջանակի աւետարանել կռոցն իւրեանց
10 եւ ժողովրդեանն։ Եւ եդին զզէն նորա
ի տան աստուածոյն իւրեանց. եւ զգլուխ
նորա ¹⁷եդին ի տան Դագոնայ։
11 Եւ լուան ամենեքեան որ բնակեալ
էին ¹⁸ի Գաղաադ զոր ինչ արարին այ-
լազգիքն ընդ Սաւուղ ¹եւ ընդ Իսրա-

¹¹Կամ, Եզրիկամ, Բոքերու ¹²Եբր. Եսելի ¹³Եբր. Փղշտացիք. դարձեալ և յետոյ։ ¹⁴Եբր. փախեաւ այր Իսրայելի ¹⁵Եբր. վիրաւորեցաւ յաղեղնաւորացն ¹⁶Եբր. ի հովտին ¹⁷Եբր. բեւեռեցին ¹⁸Եբր. ի Յաբիս Գաղաադու

12 յէլ՝՝, Եւ յարեան [1]ի Գաղաադէ ամենայն
արք զօրաւորք, եւ առին զմարմինն
Սաւուղայ եւ զմարմինս որդւոց նորա,
եւ բերին ի Յաբիս եւ թաղեցին զոս–
կերս նոցա ընդ կաղնեաւն ի Յաբիս, եւ
13 պահեցին աւուրս եւթն ։ Եւ մեռաւ Սա–
ւուղ յանօրէնութիւնսն իւր զորս անօ–
րինեցաւ ի Տէր, ըստ բանին Տեառն զի
ոչ պահեաց. [2]վասն զի՝՝ եհարց Սաւուղ
վհկաւն խնդրել, [1]եւ պատասխանի ա–
14 րար նմա Սամուէլ մարգարէ,՝՝ Եւ ոչ
խնդրեաց զՏէր. եւ սպան զնա, եւ
դարձոյց զթագաւորութիւնն՝ Դաւթի
որդւոյ Յեսսեայ ։

## ԳԼ. ԺԱ

1 Եւ եկն ամենայն Իսրայէլ առ Դաւիթ
ի Քեբրոն եւ ասեն, Ահաւասիկ ոսկերք
2 քո եւ մարմինք քո եմք ։ Եւ յերէկն եւ
յեռանդ, մինչ էր Սաւուղ արքայ, դու
էիր որ հանէիր եւ մուծանէիր զԻսրա–
յէլ. եւ ասաց Տէր Աստուած քո ցքեզ,
Դու հովուեսցես ժողովրդեան իմում Իս–
րայէլի, եւ դու լիցիս առաջնորդ ի վե–
3 րայ [3]Իսրայելի ։ Եւ եկին ամենայն ծերքն
Իսրայէլի առ արքայ ի Քեբրոն, եւ եդ
արքայ Դաւիթ ուխտ ընդ նոսա ի Քեբ–
րոն առաջի Տեառն. եւ օծին զԴաւիթ
թագաւոր ի վերայ Իսրայէլի, ըստ բանին
Տեառն զոր խօսեցաւ ի ձեռն Սամուէլի ։
4 Եւ գնաց [4]արքայ եւ արք նորա՝՝ յԵ–
րուսաղէմ, որ է Յեբուս, եւ անդ Յե–
5 բուսացիքն բնակէին յերկրին ։ Եւ ա–
սեն բնակիչքն Յեբուսայ ցԴաւիթ, Ոչ
մտցես դու այսր. եւ [5]առ զամրոցն Սիո–
6 նի, այն է քաղաք Դաւթի ։ Եւ ասէ
Դաւիթ, Ամենայն որ հարցէ զՅեբու–
սացին յառաջագոյն, եղիցի իշխան եւ
զօրավար. եւ ել յառաջ ի վերայ նորա
Յովաբ որդի Շարուհեայ, եւ եղեւ իշ–
7 խան ։ Եւ նստաւ Դաւիթ յամրոցին,
վասն այնորիկ կոչեաց զնա քաղաք
8 Դաւթի ։ Եւ շինեաց զքաղաքն շուրջա–
նակի, [6]եւ պատերազմեցաւ եւ առ զքա–
9 ղաքն՝՝ ։ Եւ երթայր Դաւիթ երթալով եւ
մեծանայր, եւ Տէր ամենակալ էր ընդ
նմա ։

10 Եւ սոքա իշխանք էին զօրացն Դաւ–
թի, որք զօրանային ընդ նմա ի թագա–
ւորութեան նորա, ընդ ամենայն Իսրա–
յէլի, որք թագաւորեցուցանէին զնա
ըստ բանին Տեառն ի վերայ Իսրայէլի ։
11 Եւ այս թիւ զօրաւորացն Դաւթի. Իզ–
բաամ որդի Աքամանի, [7]առաջին յե–
րեցն. նա ձգեաց զսուրն իւր միան–
գամ ի վերայ երեք հարեւր վիրաւո–
րացն՝՝ ի միում ժամանակի ։
12 Եւ յետ նորա Եղիազար որդի Դով–
դայի Աքուքացւոյ. նա յերիս զօրաւորսն
13 [8]էր ընդ Դաւթայ ի Փասսաոդոմին ։ Եւ՝՝
այլազգիքն ժողովեցան անդր ի պատե–
րազմ. եւ էր մասն ինչ անդաստանին
լի գարեաւ, եւ զօրն փախեաւ յերեսաց
14 այլազգեացն ։ Եւ [9]եկաց ի մէջ մասինն
եւ պահեաց՝՝ զնա. եւ հարին զայլազ–
գիսն, եւ արար Տէր փրկութիւն մեծ ։
15 Եւ իջին երեք յերեսուն իշխանացն ի
վէմն առ Դաւիթ յայրն Ոդոդոմայ. եւ
բանակ այլազգեացն էր բանակեալ ի
16 հովտին [10]սկայից ։ Եւ Դաւիթ յայնժամ
էր յամրոցին, եւ զօր այլազգեացն էր
17 յայնժամ ի Բեթղեհեմ ։ Եւ ցանկացաւ
Դաւիթ եւ ասէ, Ո՞ արբուցանէր ինձ
ջուր ի ջրհորոյն Բեթղեհեմի որ առ
18 դրանն է ։ Եւ պատառեցին երեքն զբա–
նակ այլազգեացն, եւ հանին ջուր ի
ջրհորոյն Բեթղեհեմի որ է առ դրանն,
եւ առին եւ եկին առ Դաւիթ. եւ ոչ
կամեցաւ Դաւիթ ըմպել զայն, եւ նուի–
19 րեաց զայն Տեառն, Եւ ասէ, [11]Քաւիչ
լիցի ինձ Աստուած՝՝ առնել զբանդ զայդ,
[12]եթէ զարիւն արանցդ այդոցիկ արբից
յանձինս իւրեանց. վասն զի ոգւովքն իւր–
եանց բերին զայդ, եւ ոչ կամեցաւ ըմ–
պել զայն. զայս արարին երեք զօրա–
ւորքն ։
20 Եւ Աբեսսա եղբայր Յովաբու էր իշ–
խան երիցն. նա ձգեաց [13]զսուրն ի վե–
րայ վեց հարեւր վիրաւորացն ի միում
21 ժամանակի՝՝. Եւ նա էր անուանի ի մէջ
[14]երիցն ի վերայ նոցա՝՝, քան զերկուսն

---

[1] Յեբր. գաղաադ [2] Եբր. նաեւ [3] Եբր. ժողովրդեանն իմոյ Իսրայելի [4] Եբր. Դաւիթ եւ ամենայն Իսրայէլ [5] Եբր. ա՛ռ Դաւիթ [6] Եբր. զՄեղոն եւ շուրջանակն. եւ Յովաբ նորոգեաց զմնացորդ քաղաքին

[7] Եբր. առաջին զօրավարաց (կամ երեանից). Նա ձգեաց զնիզակ իւր ի վերայ երեք հարիւրոց, սպան զնոսա [8] Եբր. էր. (13) Նա էր ընդ Դաւթայ յԱփիոդոմին. եւ [9] Եբր. կացին ի մէջ արտին եւ ապրեցուցին [10] Կամ, Ռափայնոց [11] Եբր. Քաւ լիցի ինձ յԱստուծոյ իմմէ [12] Եբր. միթէ [13] Եբր. զնիզակն ի վերայ երեքհարիւրոց եւ սպան զնոսա [14] Եբր. երիցն. (21) Յերից անտի

փառաւորագոյն, եւ էր նոցա իշխան,
եւ մինչ յերիսն ոչ ժամանէր։
22 Եւ Բանեա որդի Յովիդայեայ, [1]որ-
դի առն զօրաւորի. բազում էին գործք
նորա ի Կաբսէսլայ. նա եհար զերկուս
[2]որդիսն Արիէլ Բանեայ". եւ նա էջ եւ
եհար զառեւծն ի մէջ գբին յաւուր ձեան։
23 Նա եհար զայրն Եգիպտացի զայր երե-
ւելի հնգականգնեան, եւ ի ձեռն Եգիպ-
տացւոյն նիզակ իբրեւ զաձորի ոստայ-
նանկաց. եւ էջ առ նա Բանեա բրաւ,
եւ եհան ի ձեռանէ Եգիպտացւոյն զնի-
զակն, եւ սպան զնա նիզակաւն նորին։
24 Զայս արար Բանեա որդի Յովիդայեայ.
եւ անուն նորա ի մէջ երից զօրաւո-
25 րաց. Քան [3]զերիսն փառաւորագոյն, եւ
առ երիսն ոչ ժամանէր. եւ կացոյց զնա
Դաւիթ ի վերայ [4]ատհմին իւրոյ։
26 Եւ սոքա էին զօրաւորք զօրացն. Ա-
սայէլ եղբայր Յովաբայ, Եղեանան որ-
27 դի Դուդայի ի Բեթղեհեմէ, Սամովթ
28 Արովրացի, Գեղէս Փաղոնեացի, [5]Ովրէ
որդի Թեկուացւոյն", Աբիեզեր Անաթով-
29 թացի, Սոբոքայ Ասովթացի, Եղիաբ
30 Ոհեացի, Մողարէ Նետոփաթացի, Ե-
ղեադ որդի Բաանայ Նետոփաթացւոյ,
31 Եթայի որդի Հաւիայի ի լլրոյն Բենիա-
32 մինի. Բանեա Փարաթոնացի, Ուրի [6]ի
Նեքեղայ, Գաասաբիէլ Սարաբաթացի"։
33 Ազաւովթ Բարումացի, Եղիաբա Սաղա-
34 բոնացի, [7]Որդի Ասամայ Գովթնացւոյ՝
Յովնաթան որդի Սագէի Արարացւոյ,
35 Աքիամ որդի Սաքարայ Արարացւոյ,
36 Եղիփաադ որդի Ուրայ, Ոփեր Մե-
37 քուրաթացի, Աքիա Փեղոնացի, Ասա-
րա Կարմեղացի, Նաարէ որդի Ազբեայ,
38 Յովէլ եղբայր Նաթանայ, Մաբար որ-
39 դի Ագարայ, Սեղեկ Ամոնացի, Նաար
Աբերոնացի՝ կապարճակիր Յովաբայ որդ-
40 ւոյ Շարուհեայ, Իրաս Ութեթացի, Գա-
41 րեբ Յեթերացի, Ուրիաս Քետացի, Զա-
42 բադ որդի Աղայեայ [8]Որդւոյ Սեգքայ ի
Ռուբենայ, իշխան ի վերայ երեսնիցն",
43 Անան որդի Մաաքայ, Յովսափատ Մաա-
44 թանացի, Ոզիաս Աստարովթացի, Սա-
մաա եւ Յեւել որդիք Քովթանացւոյն
45 Արարացիք, Յեդիէլ որդի Սամարեայ
եւ Յովազա եղբայր նորա, Թովսացիք,
46 Յեդիէլ Մաովնացի, Այերաբ եւ Յովսէ
[9]որդի նորա, Եղնամացիք", Յեթեմա
Մովաբացի, Յեդիէլ եւ Ոբէդ եւ Յա-
սիէլ Մովսաբացի։

ԳԼ. ԺԲ

1 Եւ սոքա եկին առ Դաւիթ ի Սիկեղակ,
մինչդեռ [10]նեղեալ էր յերեսաց Սաւու-
ղայ որդւոյ Կիսեայ. եւ սոքա էին ի
զօրաւորսն օգնականք ի պատերազմին,
2 Եւ աղեղամբ յաջուց եւ յահեկաց, եւ
պարսաւորք քարամբք եւ նետիւք, յեղ-
3 բարցն Սաւուղայ ի Բենիամինէ իշխան
Աքիեզեր, եւ Յովաս որդիք Սամայ՝
Գաբաայի, եւ Յեզիէլ եւ Փաղէտ որ-
դիք Ազմովթայ, Բարաքիա եւ Յէու
4 Անաթովթացի, Սամէաս Գաբաւոնացի,
զօրաւոր ի մէջ երեսնից, եւ ի վերայ ե-
րեսնիցն, Յերեմիաս եւ Յեզիէլ եւ Յով-
5 նան եւ Զաբադ՝ ի Գադերոնայ, Եղի-
ազա եւ Յարիմութ եւ Բաաղիա եւ Սա-
6 մարիա եւ Սափատիաս յԱրիփեղայ, Եղ-
կանա, Յեսիա, [11]Եզիէլ եւ Յովզարայ
7 եւ Յեզբաամա Կորացիք, Յովէլ եւ Զա-
բադիա, որդիք Յերոմայ Գեդովրացւոյ։
8 Եւ ի Գադայ որոշեցան առ Դաւիթ,
[12]եւ յանապատէն" զօրաւորք ուժով, արք
որք հարկանէին պատերազմ, առեալ
վահանս եւ աշտեայս, եւ դէմք նոցա
իբրեւ զդէմս առիւծու, եւ թեթեւա-
գոյնք ոտիւք իբրեւ զայծեմունս ի վե-
9 րայ լերանց արագութեամբ։ Եզեր՝ իշ-
խան, Աբդիաս՝ երկրորդ, Եղիաբ՝ եր-
10 րորդ, Մասման՝ չորրորդ, Յերեմիաս՝
11 հինգերորդ, Եթթի՝ վեցերորդ, Եղիէլ՝
12 եւթներորդ, Յովնան՝ ութերորդ, Եղ-
13 զաբաթ՝ իններորդ, Յերեմիաս՝ տաս-
ներորդ, Մաքաբանէ՝ մետասաներորդ։
14 Սոքա յորդւոյն Գադայ իշխանք զօ-
րացն, ի հարիւրոն փոքր, եւ մեծ ի մէջ
15 հազարացն։ Սոքա են որք անցին ընդ
Յորդանան յամսեանն առաջնում, եւ նա
էր լի յամենայն [13]յափափն իւրում". եւ
հալածեցին զամենայն բնակիչս հովտացն՝
յարեւելից մինչեւ յարեւմուտս։
16 Եւ եկին յորդւոցն Բենիամինի եւ Յու-
17 դայ յօգնութիւն Դաւթի։ Եւ Դաւիթ
ել ընդ առաջ նոցա, եւ ասէ ցնոսա,

[1]Եբր. որդւոյ [2]Եբր. առիւծունս (հզօրս) Մո-
վաբու [3]Եբր. զերեսունսն [4]Եբր. ատենին
[6]Եբր. Իրաս որդի Թեկուացւոյ [6]Եբր. ի ձորոցն
Գաասայ, Աբիէլ Արաբաթացի [7]Եբր. Յորդւոց
[8]Եբր. Ադինա որդի Սիզայ Ռուբենեան, գլուխ
Ռուբենեանց, եւ ընդ նմա եռեսունք

[9]Եբր. որդիք Եղնամայ [10]Եբր. թաքուցեալ
[11]Եբր. Ազարիէլ [12]Եբր. յամուր անդր յանա-
պատին [13]Եբր. ափունս իւր

Եթէ խաղաղութեամբ եկիք առ իս[1], ե-
գիցի սիրտ իմ ընդ ձեզ. ապա թէ մատ-
նել զիս թշնամեաց իմոց եկիք, [2]ոչ
ճշմարտութեամբ ձեռին", տեսցէ Ա-
ստուած հարցն մերոց եւ յանդիմանես-
18 ցէ։ Եւ զօրացոյց Հոգին զԱմասայ՝ զիշ-
խան երեսնիցն, եւ ասէ, [3]Երթ, Դա-
ւիթ, որդի Յեսսեայ եւ զօրդ քո", խա-
ղաղութիւն քեզ, եւ խաղաղութիւն օգ-
նականաց քոց. վասն զի օգնեաց քեզ Ա-
ստուած քո. եւ ընկալաւ զնոսա Դա-
ւիթ, եւ կացոյց զնոսա իշխանս զօրացն։
19 Եւ ի Մանասէէ դիմեցին առ Դաւիթ
ի գալ այլազգեացն ի վերայ Սաւուղայ
ի պատերազմ, եւ ոչ օգնեաց նոցա.
վասն զի խորհրդիւ եղեւ զօրագլխացն
այլազգեաց, որք ասացին եթէ Գլխովք
արանցդ այդոցիկ դառնայ դա առ տէր
20 իւր Սաւուղ։ Ի գնալն նորա ի Սիկելակ՝
դիմեցին առ նա ի Մանասէէ, Եգնա,
Յովզաբադ[4] եւ Եդիու եւ Սաղթի, իշ-
խանք հազարացն որք էին Մանասէի.
21 Եւ նոքա գումարեցան ընդ Դաւթի ի
վերայ հինին. վասն զի զօրաւորք էին
ուժով, ամենեքեան իշխանք ի վերայ
22 զօրուն. Քանզի աւուրց յաւուրս գա-
յին առ Դաւիթ ի զօրութիւն մեծ իբ-
րեւ զօրութիւն Աստուծոյ։
23 Եւ այսոքիկ են [5]անուանք իշխանաց
զօրուն, որք եկին առ Դաւիթ ի Քեբ-
րոն, դարձուցանել զթագաւորութիւնն
Սաւուղայ առ նա ըստ բանին [6]Աստու-
24 ծոյ։ Որդիք Յուդայ վահանակիրք եւ
տիգաւորք, վեց հազար եւ ութ հարեւր
25 զօրաւորք ի պատերազմի։ Եւ յորդւոցն
Շմաւոնի հզօրք ուժով ի պատերազմել՝
26 եւթն հազար եւ հարեւր։ Յորդւոցն
Ղեւեայ՝ չորք հազար եւ վեց հարեւր։
27 Եւ [7]Յովդաս առաջնորդ, եւ" յորդւոցն
Ահարոնի ընդ նմա երեք հազար եւ եւթն
28 հարեւր, Եւ Սադովկ մանուկ հզօր ու-
ժով ի տանէ հօր իւրոյ, եւ իշխանք
29 քսան եւ երկու։ Եւ յորդւոցն Բենիա-
մինի յեղբարցն Սաւուղայ երեք հա-
զար, եւ յոլովք ի նոցանէ էին վերա-
30 կացուք տանն Սաւուղայ։ Եւ յորդւոցն
Եփրեմայ՝ քսան հազար եւ ութ հարեւր

[1] Եբր–յոյն յ––ել––, օգնել ինձ [2] Եբր. չիք անօրէնութիւն ի ձեռս իմ [3] Եբր. Քո եմք, Դաւիթ, եւ ընդ քեզ, որդի Յեսսեայ, խաղաղութիւն [4] Եբր–յոյն յ––ել––, Յեդիել եւ Միքայէլ, եւ Յովզաբադ [5] Եբր. Թիւք [6] Եբր. Տեառն [7] Եբր. Յովիադա առաջնորդ

զօրաւորք ուժով, արք անուանիք ըստ
31 տանց տոհմիցն իւրեանց։ Եւ ի կիսոյ
ցեղէն Մանասէի՝ ութուտասն հազար,
որք անուանեցան յանուանէ թագաւո-
32 րեցուցանել զԴաւիթ։ Եւ յորդւոցն Ի-
սաքարայ որք գիտէին զհանճար, ի ժա-
մանակի ճանաչելով թէ զինչ [8]առնիցեն
Իսրայելի, յիշխանութեան իւրեանց"
երկերիւր. եւ ամենեքեան եղբարք իւ-
33 րեանց ընդ [9]նոսա։ Եւ ի Զաբուղոնէ
որք ելանէին ի մարտ պատերազմի ա-
մենայն պատերազմական գործեաւ յի-
սուն հազար, [10]օգնել Դաւթի՝ ոչ ունայ-
34 նաձեռն"։ Եւ ի Նեփթաղիմայ իշխանք
հազարք, եւ ընդ նոսա վահանաւորք եւ
35 տիգաւորք [11]երեսուն հազար։ Եւ ի Դա-
նայ կարգեալք ի պատերազմ՝ քսան եւ
36 ութ հազար եւ [12]ութ հարեւր։ Եւ յԱ-
սերայ որք ելանէին օգնել ի պատերազ-
37 մի, քառասուն հազար։ Եւ յայնմ կող-
մանէ Յորդանանու, ի յՌուբինէ եւ ի
Գադայ եւ ի կիսոյ ցեղէն Մանասէի ա-
մենայն պատերազմական գործեօք՝ հա-
38 րեւր քսան հազար։ Ամենեքեան նոքա
արք պատերազմօղք կարգեալք ի մարտ.
խաղաղական անձամբ եկին ի Քեբրոն
թագաւորեցուցանել զԴաւիթ ի վերայ
[13]Իսրայելի. եւ այլ մնացորդքն Իսրա-
յելի իբրեւ զանձն մի՝ թագաւորեցու-
39 ցանել զԴաւիթ։ Եւ էին [14]անդ աւուրս
երիս, ուտէին եւ ըմպէին. վասն զի
պատրաստեցին նոցա եղբարքն իւրեանց։
40 Եւ սահմանակիցք նոցին, մինչեւ յԻսա-
քար եւ ի Զաբուղոն եւ ի Նեփթաղիմ
բերէին նոցա ուղտուք եւ իշովք եւ ջոր-
ւովք եւ եզամբք կերակուրս, ալեւր եւ
թուզ եւ չամիչ եւ գինի եւ ձէթ, եւ
զուարակս եւ ոչխարս բազումս. վասն
զի ուրախութիւն էր յԻսրայէլի։

Գլ. ԺԳ

1 Եւ խորհեցաւ Դաւիթ ընդ հազարա-
պետսն եւ հարիւրապետսն եւ ընդ ա-
2 մենայն իշխանսն։ Եւ ասէ Դաւիթ ցա-
մենայն եկեղեցին Իսրայելի, Եթէ իցէ
բարութիւնդ ի ձեզ, եւ ի Տեառնէ Ա-
ստուծոյ մերմէ յաջողեցաւ, առաքես-
ցուք առ եղբարսն մեր որ մնացեալ են

[8] Եբր. առնիցէ Իսրայէլ. իշխանք նոցա [9] Եբր. բանիւ նոցա [10] Եբր. տալ ճակատ ի մի սիրտ [11] Եբր. երեսուն եւ եւթն [12] Եբր. վեց [13] Եբր. ամենայն Իսրայելի [14] Եբր. անդ ընդ Դաւթի

յամենայն Իսրայէլի, եւ ընդ նոսա քա-
հանայք եւ Ղեւտացիք ի քաղաքսն [1]կա-
լուածոյ իւրեանց, եւ ժողովեսցին առ
3 մեզ. Եւ բերցուք այսր առ մեզ զտա-
պանակն Աստուծոյ մերոյ. վասն զի ոչ
[2]խնդրեցին զնա յաւուրսն Սաւուղայ։
4 Եւ ասաց ամենայն եկեղեցին առնել
այնպէս. վասն զի ուղիղ էր բանն յաչս
5 ամենայն ժողովրդեանն։ Եւ եկեղեցա-
ցոյց Դաւիթ զամենայն Իսրայէլ [3]ի սահ-
մանացն Եգիպտոսի մինչեւ յԵմաթ",
տանել զտապանակն Աստուծոյ ի քա-
6 ղաքէն Յարիմայ։ Եւ [4]եհան զնա" Դա-
ւիթ, եւ ամենայն Իսրայէլ ել [5]ի քաղաքն
Դաւթի", որ էր Յուդայի, բերել անտի
զտապանակն Տեառն Աստուծոյ որ նստի
ի վերայ քերովբէից, յորոյ վերայ կոչե-
7 ցաւ անուն նորա։ Եւ եդին զտապա-
նակն Աստուծոյ ի վերայ սայլի նորոյ,
ի տանէն Աբինադաբայ. եւ Ոզա եւ [6]եղ-
8 բարք նորա" ածէին զսայլն։ Եւ Դաւիթ
եւ ամենայն Իսրայէլ խաղային առաջի
Աստուծոյ ամենայն զօրութեամբ, եր-
գովք սաղմոսաց, տաւղօք եւ քնարօք
եւ թմբկօք եւ ծնծղայիւք եւ փողովք։
9 Եւ եկին մինչեւ ի կալն Քեդոնայ.
եւ ձգեաց Ոզա զձեռն իւր ունել զտա-
պանակն, վասն զի թիւրեաց զնա զուա-
10 րակն։ Եւ բարկացաւ Տէր սրտմտու-
թեամբ ի վերայ Ոզայ, եւ եհար զնա
անդ՝ յաղագս ձգելոյ նորա զձեռն իւր
ի տապանակն. եւ մեռաւ անդ առաջի
11 Աստուծոյ։ Եւ տրտմեցաւ Դաւիթ, վասն
զի խրամատեաց Տէր խրամատութիւն
յՈզա. եւ կոչեաց զտեղին զայն Խրա-
12 մատութիւն Ոզայ մինչեւ յօրս յայս։ Եւ
երկեաւ Դաւիթ յԱստուծոյ յաւուրն
յայնմիկ եւ ասէ, Զիա՞րդ տարայց առ
13 իս զտապանակն Աստուծոյ։ Եւ ոչ պար-
ձոյց Դաւիթ զտապանակն առ ինքն ի
քաղաք Դաւթի, եւ խոտորեցոյց զնա ի
14 տունն [7]Աբեդդարայ Գետացւոյ"։ Եւ
նստաւ տապանակն Աստուծոյ [8]ի տանն
Աբեդդարայ" ամիսս երիս, եւ օրհնեաց
[9]Աստուած զԱբեդդար" եւ զամենայն
որ ինչ նորա։

[1] Եբր. արուարձանեացս [2] Եբր. խնդրեցաք [3] Եբր. ի Սիովրէ Եգիպտոսի մինչեւ ի մուտս Եմաթայ [4] Յեբր. գունդ [5] Եբր. ի Բաաղ, ի Կարիաթարիմ [6] Եբր. եղբայր նորա, կամ, Աքիով [7] Եբր. Աբդեդովմայ Գեթացւոյ [8] Եբր. ընդ տանն Աբդեդովմայ ի տան նորա [9] Եբր. Տէր զտունն Աբդեդովմայ

ԳԼ. ԺԴ

1 Եւ առաքեաց Քիրամ արքայ Տիւրոսի
հրեշտակս առ Դաւիթ, եւ փայտս մայրս,
եւ չինօղս որմոց եւ հիւսունս փայտից՝
2 շինել նմա տուն։ Եւ ծանեաւ Դաւիթ
եթէ [10]պատրաստեաց զնա Տէր" ի վերայ
Իսրայէլի, վասն զի աճեաց ի բարձրու-
թիւն թագաւորութիւն նորա, վասն
ժողովրդեան իւրոյ Իսրայէլի։
3 Եւ առ Դաւիթ այլ եւս կանայս յԵ-
րուսաղէմ, եւ ծնան նմա այլ եւս ուս-
4 տերք եւ դստերք։ Եւ այսոքիկ են ա-
նուանք նոցա որք ծնան նմա [4]եւ էին
նորա" յԵրուսաղէմ. Սամուս եւ Սո-
5 բաբ, Նաթան եւ Սողոմոն Եւ Յեբաար
6 եւ Եղիսաւ եւ Եղիփաղէտ Եւ Նագեթ
7 եւ Նափաա եւ Յափիէ Եւ Եղիսամա եւ
Բաղիադա եւ Եղիփաղէտ։
8 Եւ լուան [11]այլազգիքն եթէ օծաւ Դա-
ւիթ թագաւոր ի վերայ ամենայն Իս-
րայէլի, եւ ելին ամենայն այլազգիքն
խնդրել զԴաւիթ. լուաւ Դաւիթ եւ ել
9 ընդ առաջ նոցա։ Եւ այլազգիքն եկին,
եւ [12]համախմբեցան մխեանց" ի հովիտն
10 սկայից։ Եւ եհարց Դաւիթ յԱստուած
եւ ասէ, եթէ Ելի՞ց ի վերայ այ-
լազգեացն, եւ տայցե՞ս զնոսա ի ձեռս
իմ։ Եւ ասէ ցնա Տէր, Ել, եւ տաց
11 զնոսա ի ձեռս քո։ Եւ ել Դաւիթ ի
Բաաղփարասիմ, եւ եհար զնոսա Դա-
ւիթ. եւ ասէ Դաւիթ, Խրամատեաց Աս-
տուած զթշնամիս իմ ձեռամբ իմով,
իբրեւ զխրամատութիւն ջրոյ. յաղագս
այնորիկ կոչեաց զանուն տեղւոյն այնո-
12 րիկ [13]Խրամատութիւն Փարասինայ"։ Եւ
թողին անդ զաստուածս իւրեանց. եւ
ասաց Դաւիթ այրել զնոսա հրով։
13 Եւ յաւելին այլ եւս այլազգիքն եւ
14 [12]համախմբեցան ի հովիտն [4]սկայից։ Եւ ե-
հարց Դաւիթ դարձեալ զԱստուած. եւ
ասաց ցնա Աստուած, Ոչ երթիցես զկնի
նոցա. դարձիր ի նոցանէ, եւ [14]թողցես
15 զնոսա մերձ ի տանձիսն"։ Եւ եղիցի ի
լսել քո զձայն շարժման ծայրից [15]տանձ-
ձեացն, յայնժամ ելցես ի պատերազ-
մել, վասն զի ելցէ Աստուած առաջի

[10] Եբր. հաստատեաց զնա Տէր ի թագաւոր [11] Եբր. Փղշտացիքն. այսպէս և ի Ներքոյ [12] Եբր. սփռե-ցան [13] Եբր. Բաաղփարասիմ [14] Եբր. գայցես առ նոսա յեսոյ կուսէ թթենեացն [15] Եբր. թթենեացն

16 քո հարկանել զբանակ այլազգեացն ։ Եւ
[1]արար որպէս պատուիրեաց նմա Աս-
տուած , եւ եհար զբանակ այլազգեացն
17 ի Գաբաւոնէ մինչեւ ի Գազերա ։ Եւ
ելեւ անուն Դաւթի յամենայն երկիր ,
եւ Տէր ետ զերկեւղ նորա ի վերայ ա-
մենայն ազգաց ։

## ԳԼ. ԺԵ

1 Եւ արար իւր տունս ի քաղաքի Դաւ-
թի , եւ պատրաստեաց զտեղի տապա-
նակին Աստուծոյ , եւ արար նմա խորան ։
2 Յայնժամ ասաց Դաւիթ , Ոչ այլ ումեք
է բառնալ զտապանակն Աստուծոյ , բայց
միայն Ղեւտացւոցն . վասն զի զնոսա
ընտրեաց Տէր բառնալ զտապանակն
իւր , եւ պաշտել առաջի նորա մինչեւ
յաւիտեան ։
3 Եւ ժողովեաց Դաւիթ զամենայն Իս-
րայէլ յԵրուսաղէմ հանել զտապանակն
Տեառն ի տեղին զոր պատրաստեաց նմա։
4 Եւ ժողովեաց Դաւիթ զորդիսն Ահարո-
5 նի եւ զՂեւտացիսն . Յորդւոցն Կահա-
թու՝ Ուրիէլ իշխան , եւ եղբարք նորա
6 հարիւր քսան . Յորդւոցն Մերարեայ՝
Ասայիա իշխան , եւ եղբարք նորա եր-
7 կերիւր [2]յիսուն . Յորդւոցն Գերսոնի՝
Յովէլ իշխան , եւ եղբարք նորա հարիւր
8 երեսուն . Յորդւոցն Եղիսափանայ՝ Սա-
մայիա իշխան , եւ եղբարք նորա եր-
9 կերիւր . Յորդւոցն Քեբրոնի՝ Եղիէլ իշ-
10 խան , եւ եղբարք նորա ութսուն . Յորդ-
ւոցն Ոզիելի՝ Ամինադաբ իշխան , եւ
եղբարք նորա հարիւր եւ երկոտասան ։
11 Եւ կոչեաց Դաւիթ զՍադովկ եւ զԱ-
բիաթար, զքահանայսն եւ զՂեւտացիսն,
զՈւրիէլ եւ զԱսայիա եւ զՅովէլ եւ
12 զՍամայիա եւ զԵղիէլ եւ զԱմինադաբ, Եւ
ասէ ցնոսա , Դուք էք իշխան տոհմից
Ղեւտացւոց , սուրբ արարէք եւ եղ-
բարք ձեր , եւ հանէք զտապանակն
[3]Աստուծոյ Իսրայէլի ի տեղին զոր պատ-
13 րաստեցի նմա ։ [4]Ո՞չ առաջքէն" զի ոչ
էիք դուք յառաջ , խրամատեաց [5]Աս-
տուած ձեր" ի մեզ , վասն զի ոչ խնդրե-
14 ցաք խրատուք զնա ։ Եւ սրբեցան քա-
հանայքն եւ Ղեւտացիք բերել զտապա-
15 նակն [3]Աստուծոյ Իսրայէլի ։ Եւ առին
որդիք Ղեւտացւոցն զտապանակն Աս-
տուծոյ , որպէս եւ պատուիրեաց Մով-
սէս բանիւ [6]Աստուծոյ ըստ գրոց , բառ-
նալ նոքօքն ի վերայ ուսոց իւրեանց ։
16 Եւ ասէ Դաւիթ ցիշխանս Ղեւտաց-
ւոցն, Կացուցէք զեղբարսն ձեր որք եր-
գեն զօրութեամբ նուագարանօք երգոցն ,
քնարօք եւ սրնգօք եւ ծնծղայիւք , ամ-
բառնալ զձայնս ի բարձունս ուրախու-
17 թեան ձայնիւ ։ Եւ կացուցին Ղեւտա-
ցիքն զԵմանն որդի Յովելի , եւ յեղբարց
նորա զԱսափ որդի Բարաքեայ , եւ յորդ-
ւոցն Մերարեայ յեղբարցն նորա զԵթան
18 որդի Կիսեայ ։ Եւ ընդ նոսա եղբարքն
իւրեանց երկրորդք , Զաքարիաս , [7]եւ Յո-
զէլ" եւ Սամիրամովթ եւ Յեքիէլ եւ Ա-
նանիաս եւ Եղիաբ եւ Բանեա եւ Մա-
սիաս եւ Մատաթիաս եւ Եղիփաղա եւ
Մակեզիաս եւ Աբդեդոմ եւ Յեէլ [4]եւ
19 Ոզիաս" դռնապանքն ։ Եւ սաղմոսա-
նուագքն՝ Եմանն եւ Ասափ եւ Եթան
տաւղօք պղնձեօք , լսելի առնել զձայնս ։
20 Զաքարիաս եւ Ազիէլ եւ Սամիրամովթ
եւ Եքիէլ եւ Անանիաս եւ Եղիաբ եւ
Մասիաս եւ Բանեա՝ [8]քնարօք , եւ Ա-
21 զեմովթ", Եւ Մատաթիաս եւ Եղիփա-
ղէս եւ Մակենիա եւ Աբդեդոմ եւ Յե-
էլ եւ Ոզիաս՝ [9]սրնգօք . Անանթիա՝
22 զօրացուցանել". Եւ Քանանիաս իշխան
Ղեւտացւոցն՝ իշխան ի վերայ երգոցն ,
23 վասն զի էր հանճարեղ ։ Եւ Բարաքիաս
եւ Եղկանա՝ դռնապանք տապանակին ։
24 Եւ Սովմնիաս եւ Յովսափատ եւ Նա-
թանիէլ եւ Ամասայի եւ Զաքարիաս եւ
Բանեաս եւ Եղիազար , քահանայքն [10]յա-
ւագեալք փողովք" առաջի տապանա-
կին Աստուծոյ . եւ Աբդեդոմ եւ Յէիա՝
դռնապանք տապանակին Աստուծոյ ։
25 Եւ Դաւիթ եւ ծերքն Իսրայէլի եւ
հազարապետաց երթային հանել զտապա-
նակ ուխտին Տեառն ի տանէն [11]Աբեդ-
26 դարայ ուրախութեամբ ։ Եւ եղեւ ի զօ-
րացուցանելն Աստուծոյ [12]զիշխանսն որ
բարձին զտապանակ ուխտին Տեառն ,
զենին եւթն զուարակս եւ եւթն խոյս ։
27 Եւ Դաւիթ զգեցեալ էր պատմուճան
բեհեզեղէն . [13]եւ ամենայն Ղեւտացիքն

[1] Եբր. արար Դաւիթ [2] Եբր. եւ քսան [3] Եբր. Տեառն Աստուծոյ [4] Յեբր. պակաս [5] Եբր. Տէր Աստուած մեր

[6] Եբր. Տեառն [7] Եբր. Բեն եւ Յազիէլ [8] Եբր. տաւղօք ի վերայ Աղամովթայ [9] Եբր. քնարօք ի վերայ Շէմինիթայ առաջնորդել [10] Եբր. հնչեցուցանէին փողս [11] Եբր. Աբդեդոմայ [12] Եբր. զՂեւտացիսն [13] Եբր. նոյնպէս ամենայն Ղեւտացիքն որ բառնային զտապանակն , եւ սաղմոսանուագքն եւ Քոնենիաս իշխան երգոցն որոց

բարձին զտապանակ ուխտին Տեառն,
և սաղմոսանուագքն, և Քենենիաս էր
իշխան երգոյն որք" նուագէին. և Դա-
ւիթ զգեցեալ [1]պատմուճան բեհեզեղէն։
28 Եւ ամենայն Իսրայէլ հանէին զտապա-
նակ ուխտին Տեառն հնչմամբ, ձայնիւ
[2]եղջերեաւն, և փողով և ծնծղայիւք
29 նուագելով քնարօք և տաւղօք։ Եւ ե-
ղև մինչդեռ տապանակն [3]Աստուծոյ
գայր ի քաղաքն Դաւթի, և Մեղքող
դուստր Սաւուղայ կարկառեալ ընդ պա-
տուհանն՝ ետես զարքայ Դաւիթ զի կա-
քաւէր և խաղայր, և անգոսնեաց զնա
ի միտս իւր։

## Գլ. ԺԶ

1 Եւ [4]տարան ի ներքս զտապանակն Աս-
տուծոյ, և [5]հաստատեցին զնա ի մէջ խո-
րանին՝ զոր պատրաստեաց նմա Դաւիթ.
և մատուցին ողջակէզս և [6]զփրկու-
2 թեանցն առաջի Աստուծոյ։ Եւ կատա-
րեաց Դաւիթ մատուցանել զողջակէզսն
և [7]զփրկութեանսն, և օրհնեաց զժո-
3 ղովուրդն յանուն Տեառն։ Եւ բաշխեաց
ամենայն Իսրայէլի յառնէ մինչև ցկին,
ի մարդ՝ հաց մի ի հացարարոցէ. և պա-
տառ մի ի կարկանդակաց[8]։
4 Եւ կարգեաց առաջի երեսաց տապա-
նակին [9]կտակարանացն Տեառն, ի Ղև-
տացւոցն, պաշտօնեայս [10]երգել ձայնիւ"
և խոստովան լինել և օրհնել զՏէր
5 Աստուած Իսրայէլի. զԱսափ առաջ-
նորդ, և երկրորդ նմա Զաքարիա,
զՅեէլ, զՍամիրամովթ, զՅեքիէլ, զՄա-
տաթիա, զԵղիաբ, զԲանեա, զԱբդե-
դոմ և զՅէիէլ, նուագարանօք տաւ-
ղաց և քնարաց. և Ասափ ծնծղայիւք
6 նուագէր, Եւ Բանեա և Ոզիէլ քա-
հանայք՝ փողովք. հանապազ առաջի
տապանակի կտակարանացն Աստուծոյ։
7 Եւ յաւուրն յայնմիկ յայնժամ կարգեաց
Դաւիթ ի սկզբանն օրհնել զՏէր ի ձեռն
Ասափայ և եղբարց նորա։
8 Երգ։ Խոստովան եղերուք Տեառն և
կարդացէք զանուն նորա, ծանուցէք ժո-
9 ղովրդոց զգործս նորա։ Երգեցէք նմա
և օրհնեցէք զնա, պատմեցէք ամենե-
ցուն զսքանչելիս նորա [9]զոր արար Տէր"։

10 Օրհնեցէք զանուն սուրբ նորա. ուրախ
լիցի սիրտ՝ [11]որ խնդրէ զհաճոյս նորա"։
11 Խնդրեցէք զՏէր և [12]հզօրք եղիջիք",
խնդրեցէք զերեսս նորա յամենայն ժամ։
12 Յիշեցէք զսքանչելիս նորա զոր արար,
զնշանս և զիրաւունս բերանոյ նորա.
13 Զաւակ Իսրայէլի ծառայք նորա, որդիք
14 Յակոբայ ընտրեալք նորա։ Նա է Տէր
Աստուած մեր, յամենայն երկրի են ի-
15 րաւունք նորա։ [13]Յիշեսցէ յաւիտենից"
զուխտ իւր, զբանն իւր զոր պատուի-
16 րեաց ի հազար ազգ, Զուխտն զոր եդ
ընդ Աբրահամու և զերդումն իւր ընդ
17 Իսահակայ. Հաստատեաց զնա Յակոբու
ի հրամանս, և Իսրայէլի ուխտ յաւի-
18 տենական. Ասէ, Քեզ տաց զերկիրն
Քանանու, զվիճակ ժառանգութեան ձե-
19 րոյ։ Զի [14]էին նոքա" սակաւք թուով,
և նուազք և պանդուխտք ի նմա։
20 Գնացին նոքա ազգէ յազգ և ի թագա-
21 ւորութենէ ի ժողովուրդ յայլ։ Ոչ թող
ումն հարստահարել զնոսա, և կշտամ-
22 բեաց վասն նոցա զթագաւորս. Մի՛ մեր-
ձենայք յօծեալսն իմ, և ի մարգարէս
իմ մի՛ լինիք չար։
23 Օրհնեցէք զՏէր, ամենայն երկիր,
պատմեցէք օր ըստ օրէ զփրկութիւն
24 նորա։ Պատմեցէք ի հեթանոսս զփառս
նորա, յամենայն ժողովուրդս զսքան-
25 չելիս նորա. Զի մեծ է Տէր և օրհնեալ
է յոյժ, ահաւոր է ի վերայ ամենայն
26 աստուածոց։ Վասն զի ամենայն աս-
տուածք ազգաց կուռք են, և [15]Աստուած
27 զերկինս արար։ Փառք և գոհութիւն
առաջի երեսաց նորա, զօրութիւն և
28 պարծանք ի տեղւոջ նորա։ Տուք Տեառն,
տոհմք ազանց, տուք Տեառն փառս և
29 զօրութիւն։ Տուք Տեառն զփառս ա-
նուան նորա. առէք պատարագս և
[16]մատուցէք առաջի երեսաց նորա, և
երկիր պագէք Տեառն [17]ի սրահ սրբու-
30 թեան նորա"։ Եւ երկիցէ յերեսաց նո-
րա ամենայն երկիր, [18]յաջողեսցի երկ-
31 րի" և մի՛ սասանեսցի։ Ուրախ եղի-
ցին երկինք և ցնծասցէ երկիր. և ա-
սասցեն ի հեթանոսս, Տէր թագաւո-
32 րեաց։ Հնչեսցէ ծով լիութեամբն իւ-

[1]Եբր. էր եփուդ [2]Եբր. շեփորաւ [3]Եբր. Տեառն [4]Եբր. տարան [5]Եբր. հաստատեցին [6]Եբր. խաղաղականս [7]Եբր. զխաղաղականսն [8]Եբր. յեշէն [illegible], և քարար ի տապակէ [9]Եբր. ուխտի [10]Եբր. յիշել

[11]Եբր. որոց խնդրեն զՏէր [12]Եբր. զզօրութիւնն նորա [13]Եբր. Յիշեցէք յաւիտեան [14]Եբր. էիք դուք [15]Եբր. Եհովայ [16]Եբր. եկայք [17]Եբր. ի վայելչութիւն սրբութեան [18]Եբր. Նա և հաստատեցի երկիր

րով, [1]փայտք անտառաց" եւ ամենայն
33 որ է ի նմա ։ Յայնժամ ուրախ եղիցին
[2]ամենայն ծառք անտառի [3]զի եկն" դա-
34 տել զերկիր։ Խոստովան եղերուք Տեառն,
զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմու-
թիւն նորա ։
35 Եւ ասացէք, Կեցո զմեզ, Աստուած
փրկութեան մերոյ, եւ [4]ազատեա զմեզ ի
թշնամեաց մերոց". զի օրհնեսցուք զա-
նուն քո սուրբ, եւ պարծեսցուք յօրհ-
36 նութիւնս քո ։ Օրհնեալ Տէր Աստուած
Իսրայելի յաւիտենից մինչեւ յաւի-
տեանս. եւ [5]ասասցէ ամենայն ժողո-
վուրդն, Ամէն. եւ օրհնեցին զՏէր ։
37 Եւ եթող անդ առաջի տապանակի
կտակարանացն Տեառն զԱսափ եւ զեղ-
բարս նորա պաշտել առաջի տապանա-
38 կին յամենայն ժամ օր ըստ օրէ ։ Եւ
Աբդեդովմ եւ եղբարք նորա վաթսուն
եւ ութ. եւ Աբդեդովմ էր որդի Իդի-
39 թունայ, եւ Ովսեէ ի դռնապանութիւն ։ Եւ
զՍադովկ քահանայ եւ զեղբարս նորա
զքահանայս առաջի խորանին Տեառն [6]ի
40 Բամա որ ի Գաբաւոն, Մատուցանել
ողջակէզս Տեառն ի վերայ սեղանոյ ող-
ջակիզացն հանապազ առաւօտու եւ ե-
րեկորին. եւ ըստ ամենայնի զոր ինչ
գրեալ է յօրէնսն Տեառն զոր պատուի-
րեաց [7]որդւոցն Իսրայելի ի ձեռն Մով-
41 սիսի ծառային Աստուծոյ"։ Եւ ընդ [8]նմա
Եման եւ Իդիթուն, եւ այլք ընտրեալք
յանուանէ, օրհնել զՏէր, զի յաւիտեան
42 է ողորմութիւն նորա. Եւ [9]ընդ նոսա
փողք եւ ծնծղայք, նուագել քնարօք"
երգոցն Աստուծոյ, եւ որդիքն Իդիթու-
43 նայ ի դրանն ։ Եւ գնաց ամենայն ժողո-
վուրդն իւրաքանչիւր ոք ի տուն իւր, եւ
դարձաւ Դաւիթ օրհնել զիւր տունն ։

ԳԼ. ԺԷ

1 Եւ եղեւ իբրեւ բնակեաց Դաւիթ ի
տան իւրում, ասէ Դաւիթ ցՆաթան
մարգարէ, Ահա ես բնակեմ ի տան մայր
փայտից, եւ տապանակ ուխտին Տեառն
2 է ընդ վրանօք ։ Եւ ասէ Նաթան ցԴա-
ւիթ, Զամենայն որ ինչ է յանձին քում՝
արա. վասն զի Աստուած ընդ քեզ է ։
3 Եւ ի գիշերին յայնմիկ եղեւ բան Տեառն
4 առ Նաթան եւ ասէ, Երթ եւ ասա ցԴա-
ւիթ ծառայ իմ, Այսպէս ասէ Տէր. Ոչ
շինեսցես դու ինձ տուն բնակելոյ ի նմա.
5 Վասն զի ոչ երբեք բնակեցի ի տան յօ-
րէ յորմէ հանի զԻսրայէլ [10]յԵգիպտոսէ
մինչեւ յօրս յայս. էի խորանաւ ի վայ-
6 րաբնակս ։ Ամենայն ուրեք ընդ որ ան-
ցին որդիքն" Իսրայելի. եթէ խօսելով
խօսեցա՞յ ընդ միում [11]ի ցեղիցն Իսրա-
յելի եւ ի դատաւորաց նորա", որոց պա-
տուիրեցի հովուել ժողովրդեան իմոյ,
եւ ասացի, Ընդէ՞ր ոչ շինեցէք ինձ տուն
7 ի մայր փայտից ։ Եւ արդ այսպէս ա-
սասցես ցծառայ իմ Դաւիթ, Այսպէս
ասէ Տէր ամենակալ, Առի զքեզ ի վեր-
ջէ վանաց հովուացն, առ ի լինել ա-
ռաջնորդ ժողովրդեան իմում Իսրայե-
8 լի. Եւ էի ընդ քեզ ամենայն ուրեք
ուր եւ երթայիր, եւ սատակեցի զա-
մենայն թշնամիս քո յերեսաց քոց, եւ
արարի քեզ [12]անուն ըստ անուան մեծա-
9 մեծաց որք ի վերայ երկրի ։ Եւ արդ ե-
դից զտեղի ժողովրդեան իմոյ Իսրայե-
լի, եւ [13]անկեսցես զդա, եւ բնակեսցէ
առանձինն, եւ ոչ եւս [14]հոգասցէ ինչ",
եւ ոչ եւս յաւելցէ անիրաւութիւն խո-
նարհեցուցանել զդա որպէս ի սկզբանն,
10 [15]Եւ յաւուրցն յորոց կարգեցի դատա-
ւորս ի վերայ ժողովրդեան իմոյ Իսրա-
յելի, եւ նկուն արարի զամենայն թշնա-
միս քո. եւ արդ [16]աճեցուցից զքեզ, եւ
11 շինեցից զքեզ ես Տէր"։ Եւ եղիցի յոր-
ժամ լցցին աւուրք քո՝ ննջեսցես ընդ
հարս քո. եւ յարուցից զզաւակ քո յետ
քո, որ եղիցի յորովայնէ քումմէ. եւ
[17]պատրաստեցից զթագաւորութիւն նո-
12 րա ։ Նա շինեսցէ ինձ տուն, եւ ուղ-
13 ղեցից զաթոռ նորա յաւիտեան. Ես ե-
ղէց նմա ի հայր, եւ նա եղիցի ինձ յոր-
դի. եւ զողորմութիւնս ոչ արարից ի
բաց ի նմանէ, որպէս մերժեցի [18]յայն-
14 ցանէ որք յառաջ քան զքեզ էին ։ Եւ
հաւատարիմ լիցի նա ի տան իմում,

[1] Օրին. ցնծասցէ անդաստան [2] Յօրին. դաշտաց [3] Օրին. յերեսաց Տեառն, զի գայ [4] Օրին. ժողովեա զմեզ և ազատեա զմեզ յազգաց [5] Օրին. ասաց [6] Օրին. ի բարձունսն [7] Օրին. Իսրայելի [8] Օրին. Նոսա [9] Օրին. Նուագածուաց որ ընդ Եմանայ եւ Իդիթունայ, Էր փողս եւ ծնծղայս եւ Նուագարանս վասն

[10] Օրին. մինչեւ յօրս յայս, եւ եղէ ի վրանէ ի վրան եւ ի խորանէ ի խորան ։ (6) Ամենայն ուրեք ընդ որ շրջեցայ յամենայն [11] Օրին. ի դատաւորաց Իսրայելի [12] Օրին. անուն [13] Օրին. տնկեցից [14] Օրին. խախտեսցի [15] Այլք, Եւ որպէս [16] Օրին. ասեմ քեզ եթէ շինեսցէ քեզ Տէր տուն [17] Օրին. հաստատեցից [18] Օրին. յայնմանէ որ յառաջ քան զքեզ էր ։ (14) Եւ հաստատեցից զնա ի տան իմում եւ ի թագաւորութեան իմում

եւ թագաւորութիւն նորա՝՝ մինչեւ յա-
ւիտեանս, եւ աթոռ նորա եղիցի [1]ուղ-
15 ղեալ մինչեւ յաւիտեանս։ Ըստ ամենայն
բանիցս այսոցիկ եւ ըստ ամենայն տես-
լեանս այսմ՝ նոյնպէս խօսեցաւ Նա-
թան ընդ Դաւթայ։
16 Եւ եկն արքայ Դաւիթ, նստաւ ա-
ռաջի Տեառն եւ ասէ, Ո՞վ եմ ես, Տէր
Աստուած, եւ կամ զի՞նչ տուն իմ, զի
17 [2]սիրեցեր զիս մինչեւ յաւիտեան. Եւ ոչ
փոքրկացան՝՝ այսոքիկ առաջի քո, Աս-
տուած. եւ խօսեցար յաղագս տան ծա-
ռայի քո յերկարագոյն, եւ հայեցար
դու յիս [3]տեսլեամբ մարդոյ. բարձ-
րացուցեր դու զիս՝՝, Տէր Աստուած։
18 Զի՞նչ եւս յաւելուցու Դաւիթ [4]փառա-
ւորել զքեզ՝՝. դու գիտես զծառայս քո։
19 [5]Ըստ սրտի քում արարեր զամենայն
20 զմեծութիւնս [6]քո. Տէր, ոչ՝՝ ոք է նման
քեզ, եւ ոչ [7]գոյ բաց ի քէն, ըստ ա-
մենայնի զորս լուաք ականջօք մերովք։
21 Եւ ոչ ոք է իբրեւ զժողովուրդ քո զԻս-
րայէլ՝ ազգ ի վերայ երկրի՝ որում ա-
ռաջնորդեաց նմա Աստուած փրկել իւր
ժողովուրդ, եւ դնել զանուն իւր մեծ
եւ երեւելի, հանել յերեսաց ժողովրդ-
եան քո զոր փրկեցեր յԵգիպտոսէ
22 զազգսն։ Եւ եդիր զժողովուրդ քո զԻս-
րայէլ ի ժողովուրդ քեզ յաւիտեան, եւ
23 [8]դու եղեր նոցա յԱստուած։ Եւ արդ,
Տէր, բանն զոր խօսեցար ընդ ծառայի
քում եւ յաղագս տան նորա, հաւա-
տարիմ լիցի մինչեւ յաւիտեան. [9]զոր
24 ասացեր, Տէր՝՝, Տէր ամենակալ Աստուած
Իսրայէլի, [10]եւ թէ տուն՝՝ Դաւթի ծառայի
25 քո եղիցի [1]ուղղեալ առաջի քո։ Վասն
զի դու, Տէր, բացեր զունկն ծառայի
քո շինել քեզ տուն. յաղագս այսորիկ
եգիտ ծառայ քո կալ յաղօթս առաջի
26 քո։ Եւ արդ, Տէր, դու ես Աստուած.
եւ խօսեցար վասն ծառայի քո զբարիսդ
27 զայդոսիկ։ Սկսիր այսուհետեւ օրհնել
զտուն ծառայի քո, լինել առաջի քո
յաւիտեան. վասն զի դու, Տէր, օրհ-
նեցեր, եւ [11]օրհնեա յաւիտեան։

ԳԼ. ԺԸ

1 Եւ եղեւ յետ այսորիկ եհար Դաւիթ
զայլազգիսն, եւ վանեաց զնոսա. եւ
առ զԳէթ եւ զգեղս նորա ի ձեռաց այլ-
2 ազգեացն։ Եւ եհար զՄովաբ, եւ էին
Մովաբացիքն ծառայք Դաւթի բերել
3 ընծայս։ Եւ եհար Դաւիթ զԱդրաազար
արքայ Սուբայ յԵմաթ, յերթալ նորա
հաստատել զձեռն իւր ի վերայ գետոյն
4 Եփրատայ։ Եւ առ Դաւիթ զնորա հա-
զար կառս եւ եւթն հազար ձիոց եւ
քսան հազար արանց հետեւակաց. եւ
քակեաց Դաւիթ զամենայն զկառսն,
5 եւ եթող ի նոցանէ հարեւր կառս։ Եւ
եկն Ասորին ի Դամասկոսէ օգնել Ադ-
րաազարայ արքային Սուբայ. եւ եհար
Դաւիթ յԱսորեացն քսան եւ երկու հա-
6 զար արանց։ Եւ եդ Դաւիթ ամրոց
յԱսորիս ի Դամասկոսի, եւ [12]էին Դաւթի
ծառայք՝ բերել նմա ընծայս. եւ ապ-
րեցոյց Տէր զԴաւիթ յամենայն տեղիս
7 ուր եւ երթայր։ Եւ առ Դաւիթ [13]զմա-
նեակսն ոսկեղէնս որ էին ի ծառայսն
Ադրաազարայ, եւ եբեր զայն յԵրուսա-
8 ղէմ։ Եւ [14]ի Մատեբեթայ եւ յընտիր ըն-
տիր քաղաքացն՝՝ Ադրաազարու առ Դա-
ւիթ պղինձ բազում յոյժ. եւ ի նոցանէ
արար Սողոմոն զծովն պղնձի եւ զսիւնսն
եւ զկահսն պղնձիս։
9 Եւ լուաւ Թովու արքայ Եմաթայ ե-
թէ եհար Դաւիթ զամենայն զօրու-
թիւնսն Ադրաազարայ արքային Սուբայ։
10 Եւ առաքեաց զԱդուրամ զորդի իւր
առ արքայ Դաւիթ հարցանել զնմա-
նէ ի խաղաղութիւն, եւ օրհնել զնա.
վասն զի պատերազմ տայր ընդ նմա
Ադրաազար, եւ եհար զնա. քանզի այր
թշնամի էր Թովու Ադրաազարայ. եւ ա-
մենայն անօթք ոսկեղէնք եւ արծաթե-
11 ղէնք [15]ի ձեռս նորա։ Եւ զայնոսիկ սրբեաց
Դաւիթ Տեառն ընդ արծաթոյն եւ ոսկ-
ւոյ զոր առ յամենայն ազգացն, յԵդով-
մայ եւ ի Մովաբայ եւ յորդւոցն Ամոնայ
12 եւ յայլազգեացն եւ յԱմաղեկայ։ Եւ
Աբեսսա որդի Շարուհեայ եհար զԵդովմ
ի հովտին [16]Ագոմեայ ութուտասն հազար։

[1] Կամ, հաստատուն [2] Ոմն. ածեր զիս մինչեւ ցայսօր. (17) Եւ փոքրկացան [3] Ոմն. իբրեւ յայր բարձր [4] Ոմն. առ քեզ ի փառաւորութիւն ծառայի քո [5] Ոմն. Վասն ծառայի քո եւ ըստ [6] Ոմն. զայդ. Տէր, յայտ առնել զամենայն մեծամեծս։ (20) Տէր, ոչ [7] Ոմն. գոյ Աստուած [8] Ոմն. դու, Տէր, [9] Ոմն. որ որպէս խօսեցար. (24) Կացցէ եւ մեծասցի անուն քո յաւիտեան, եւ ասասցեն [10] Ոմն. Աստուած Իսրայէլի. եւ տուն

[11] Ոմն. օրհնեալ է [12] Ոմն. եղեն Ասորիք [13] Ոմն. զվահանսն [14] Ոմն. ի Տեբաթայ և ի Քունայ, ի քաղաքացն [15] Ոմն. ոյք էին յոսկեղէն, և պղնձիք [16] Ոմն. Աղտից

13 Եւ եդ [1]ի հովտին ամրոց. և էին՚՚
Եդովմայեցիք ծառայք Դաւթի. և
փրկեաց Տէր զԴաւիթ յամենայն տեղիս
ուր և երթայր։
14 Եւ թագաւորեաց Դաւիթ ի վերայ ա-
մենայն Իսրայելի, և էր առնել իրա-
ւունս և արդարութիւն ամենայն ժողո-
15 վրդեան իւրում։ Եւ Յովաբ որդի Շարու-
հեայ ի վերայ զօրացն, և Յովսափատ
16 որդի Աքիղուդայ՝ յիշատակաց գրիչ. Եւ
Սադովկ՝ որդի Աքիտովբայ, և Աբիմե-
լէք՝ որդի Աբիաթարայ՝ քահանայք, և
17 Սուսա՝ դպրապետ. Եւ Բանեա որդի
Յովիդայայ՝ ի վերայ Փերեթայն և Ո-
փելեթայն. և որդիք Դաւթի առաջինք՝
[2]փոխանորդք արքայի։

ԳԼ. ԺԹ

1 Եւ եղև յետ այսորիկ մեռաւ Նաաս
արքայ որդւոցն Ամոնայ, և թագաւո-
2 րեաց Անան որդի նորա ընդ նորա։ Եւ
ասէ Դաւիթ, Արարից ողորմութիւն
ընդ Անանայ որդւոյն Նաասու, որպէս
արար հայր նորա ընդ իս ողորմութիւն.
և առաքեաց հրեշտակս Դաւիթ մխի-
թարել զնա վասն հօր նորա. և եկին
ծառայքն Դաւթի յերկիր որդւոցն Ամո-
3 նայ մխիթարել զնա։ Եւ ասեն իշխանքն
Ամոնայ ցԱնան, Միթէ փառաւորե՞լ
Դաւիթ զհայր քո առաջի քո առաքեաց
քեզ զմխիթարիչս. ո՞չ ապաքէն [3]զի
քննեսցեն զքաղաքս,՚՚ և զխուզել զեր-
4 կիրս եկին ծառայքն նորա առ քեզ։ Եւ
առ Անան զծառայսն Դաւթի, եգերծ
զնոսա, և եհատ [4]զգրոշակսն նոցա զհա-
ստատակոծն մինչև ի վեր՚՚, և արձա-
5 կեաց զնոսա։ Եւ եկին պատմել Դաւ-
թի վասն արանցն. առաքեաց ընդ ա-
ռաջ նոցա, վասն զի էին ամաչեցեալք
յոյժ. և ասէ արքայ, Նստարուք յԵ-
րիքով մինչև աճեսցեն մօրուք ձեր,
և ապա եկեսջիք։
6 Եւ տեսին որդիքն Ամոնայ թէ [5]ա-
մաչեաց զօրն Դաւթայ՚՚, առաքեաց Ա-
նան և որդիքն Ամոնայ հազար տաղանդ
արծաթոյ, և ի վարձու կալան իւր-
եանց յԱսորւոց Միջագետաց և յԱսոր-
ւոց Մաաքայ և Սուբայ՝ կառս և հե-
7 ծեալս։ Եւ ի վարձու կալան իւրեանց
երեսուն և երկու հազար կառաց, և
զարքայն Մաաքայ և զզօրն նորա, և
եկին բանակեցան յանդիման Մեդաբայ.
և որդիքն Ամոնայ ժողովեցան ի քաղա-
քացն իւրեանց, և եկին պատերազմել։
8 Լուաւ Դաւիթ, և առաքեաց զՅո-
9 վաբ և [6]զզօրն զօրաւորացն։ Եւ ելին
որդիքն Ամոնայ և ճակատեցան ի պա-
տերազմ առ դրան քաղաքին. և թա-
գաւորքն եկեալք բանակեցան առան-
10 ձինն ի դաշտին։ Եւ ետես Յովաբ եթէ
եղեն դէմ յանդիման պատերազմել ընդ
նմա, առաջի երեսաց և զկնի, ընտ-
րեաց յամենայն [7]երիտասարդացն Իսրա-
յելի և կարգեաց ընդդէմ Ասորւոցն.
11 Եւ զմնացորդս զօրուն ետ ի ձեռս Ա-
բեսսեայ եղբօր իւրոյ, և կարգեաց ընդ-
12 դէմ որդւոցն Ամոնայ. Եւ ասէ, Եթէ
զօրասցի քան զմեզ Ասորին, լիցիս մեզ
ի փրկութիւն. և եթէ որդիքն Ամոնայ
զօրասցին քան զքեզ, ապրեցուցից
13 զքեզ. Քաջ լեր, և զօրասցուք վասն
ժողովրդեան մերում և վասն քաղա-
քաց Աստուծոյ մերոյ, և Տէր որ ինչ
14 բարի իցէ յաչս նորա՝ արասցէ։ Եւ ճա-
կատեցաւ Յովաբ և զօրն որ ընդ նմա
ընդդէմ Ասորւոյն ի պատերազմին, և
15 փախեան ի նմանէ։ Եւ որդիքն Ամոնայ
տեսին թէ փախեան Ասորիքն, փախեան
և նոքա յերեսաց [8]Յովաբայ և յերե-
սաց՚՚ Աբեսսեայ եղբօր նորա, և մտին ի
քաղաքն։ Եւ եկն Յովաբ յԵրուսաղէմ։
16 Եւ ետես Ասորին եթէ յաղթեաց նմա
Իսրայէլ, առաքեաց հրեշտակս և եհան
[9]զԱսորեստանեայն յայնմ կողմանէ Գե-
տոյն, և զՍովփաք զօրավար զօրացն
17 Ադրաազարու առաջի նոցա։ Եւ պատ-
մեցին Դաւթի, և գումարեաց զամե-
նայն Իսրայէլ, անց ընդ Յորդանան և
եկն ի վերայ նոցա, և ճակատեցաւ ընդ-
դէմ նոցա, և կարգեցաւ Դաւիթ ընդ-
դէմ Ասորւոյն, և պատերազմէր ընդ
18 նմա։ Եւ փախեաւ Ասորին յերեսաց
[10]Դաւթայ, և կոտորեաց Դաւիթ յԱսո-
րեայն եւթն հազար կառաց և քառա-
սուն հազար հետևակաց, և զՍովփաք
19 զօրավար զօրուն սպան։ Եւ տեսին
ծառայքն Ադրաազարու եթէ անկան առաջի
Իսրայելի, եդին ուխտ ընդ Դաւթայ,

[1]Ոմն. յԵդովմ պահակապանս, և եղեն ամենայն [2]Ոմն. առընթեր [3]Ոմն. քննել և տապալել [4]Ոմն. զհանդերձս նոցա ի մէջս մինչև յերաստանս [5]Ոմն. գարշելի եղեն Դաւթի

[6]Ոմն. զամենայն գունդ [7]Ոմն. ընտրելոց [8]Յոմն. պակասի [9]Ոմն. զԱսորիս [10]Ոմն. Իսրայելի

եւ ծառայեցին նմա. եւ ոչ եւս կամե-
ցաւ Ասորին օգնել որդւոցն Ամոնայ։

Գ Լ. Ի

1 Եւ եղեւ ի միւսում ամի ելանել
թագաւորացն՝ ած Յովաբ զամենայն
զաւնգս զօրացն, եւ ապականեաց զա-
մենայն երկիր որդւոցն Ամոնայ. եկին
եւ նստան շուրջ զՀռաբաթաւ. եւ Դա-
ւիթ նստէր յԵրուսաղէմ. եւ առ Յո-
վաբ զՀռաբաթ, եւ կործանեաց զնա։
2 Եւ առ Դաւիթ զպսակն [1]Մեղքոմայ
թագաւորին նոցա ի գլխոյ նորա, եւ
գտաւ կշիռ նորա տաղանդ ոսկւոյ, եւ ի
նմա ակն պատուական, եւ էր ի գլուխն
Դաւթայ. եւ աւար քաղաքի յոյժ եբեր[2]։
3 Եւ զժողովուրդն որ էր ի նմա՝ եհան,
եւ սղոցեաց սղոցօք եւ [3]ուրագօք եր-
կաթեօք". եւ այնպէս արար Դաւիթ
ամենայն քաղաքաց որդւոցն Ամոնայ.
եւ դարձաւ Դաւիթ եւ ամենայն զօրն
իւր յԵրուսաղէմ։
4 Եւ եղեւ յետ այնորիկ եղեւ միւսան-
գամ պատերազմ ի Գազեր ընդ այլազ-
գիսն. յայնժամ եհար Սուբաքէ Ասով-
թացի զՍեպփիսս յորդւոց [4]սկայիցն եւ
5 վանեաց զնա"։ Եւ եղեւ դարձեալ պա-
տերազմ ընդ այլազգիսն, եւ եհար Ե-
ղէանան որդի Յայիրայ զՂէեմի զեղբայրն
Գողիաթու Գեթացւոյ. եւ փայտ նիզակի
նորա իբրեւ զաւրի ոստայնանկաց։
6 Եւ եղեւ դարձեալ պատերազմ ի Գէթ.
եւ էր այր ամի մեծ յոյժ, եւ մատունք
նորա վեց վեց՝ քսան եւ չորք. եւ նա
7 էր յորդւոց [5]սկայիցն։ Եւ թշնամանէր
զԻսրայէլ. եւ եհար զնա Յովնաթան որ-
8 դի Սամաայ, որդի եղբօր Դաւթայ։ Նո-
քա եղեն Հռափայ ի Գէթ. [1]ամենեք-
եան էին արք հսկայք," եւ անկան ի
ձեռն Դաւթայ եւ ի ձեռն ծառայից նորա։

Գ Լ. ԻԱ

1 Եւ եկաց Բանսարկու ի մէջ Իսրայէլի,
եւ գրգեցոյց զԴաւիթ թուել զԻսրայէլ։
2 Եւ ասէ Դաւիթ ցՅովաբ եւ ցիշխանս
զօրուն, Երթայք թուեցէք զԻսրայէլ ի
Բերսաբէէ մինչեւ ցԴան, եւ բերէք առ
3 իս, եւ գիտասցից զթիւ նոցա։ Եւ ասէ
Յովաբ, Յաւելցէ Տէր ի ժողովուրդ իւր
որպէս են դոքա՝ հարիւրապատիկ, եւ
աչք տեառն իմոյ տեսցեն, զի ամենե-
քեան ծառայք են տեառն իմոյ. եւ ընդէ՞ր
խնդրէ տէր իմ զայդ, զի մի՛ լինիցի մեղք
4 ի ժողովրդեանդ Իսրայէլի։ Եւ բանն ար-
քայի զօրացաւ ի վերայ Յովաբայ. եւ
ել Յովաբ եւ եկն յամենայն սահմանս
5 Իսրայէլի, եւ եկն յԵրուսաղէմ։ Եւ ետ
Յովաբ զթիւ համարոյ ժողովրդեանն՝
Դաւթի. եւ էր ամենայն Իսրայէլ հա-
զարք հազարաց, եւ հարիւր հազար ա-
րանց որ ձգէին սուսերս. եւ Յուդաս
չորեք հարիւր [6]յիսուն հազար արանց
6 սուսերաւորաց։ Բայց զՂեւի եւ զԲեն-
իամին ոչ թուեաց ի մէջ նոցա. վասն զի
աղաղակացաւ բանն արքայի առ Յովաբայ։
7 Եւ չար երեւեցաւ առաջի Աստուծոյ
վասն իրացն այնոցիկ, եւ եհար զԻս-
8 րայէլ։ Եւ անէ Դաւիթ ցԱստուած,
Մեղայ յոյժ, զի արարի զիրդ զայդ. եւ
արդ ի բաց բարձ զչարութիւն ծառայի
քո, վասն զի ընդունայնացայ յոյժ։
9 Եւ խօսեցաւ Տէր ընդ Գադայ տեսա-
10 նողի առ Դաւիթ եւ ասէ, Երթ խօ-
սեաց ընդ Դաւթայ եւ ասասցես, Այս-
պէս ասէ Տէր. Երիս ինչս ես առեմ ի
վերայ քո, ընտրեա անձին [7]քում ի նո-
11 ցանէ եւ արարից քեզ։ Եւ եկն Գադ
առ Դաւիթ եւ ասէ ցնա, Այսպէս ասէ
12 Տէր. Ընտրեա քեզ՝ կամ երիս ամս սո-
վոյ, կամ զերիս ամիսս փախչել քեզ
յերեսաց թշնամեաց քոց, եւ սուր թշնա-
մեաց քոց եղիցի ի սատակել զքեզ, կամ
զերիս աւուրս սուր Տեառն եւ մահ յերկ-
րի քում, եւ հրեշտակ Տեառն սատա-
կեսցէ յամենայն ժառանգութիւնս Իս-
րայէլի. եւ արդ տես զինչ բան տաց
13 պատասխանի որ առաքեացն զիս։ Եւ
ասէ Դաւիթ ցԳադ, Նեղութիւն է ինձ
յոյժ [1]երեքեան այդոքիկ". բայց անկայց
ի ձեռս Տեառն, վասն զի բազում են
գթութիւնք նորա յոյժ, եւ ի ձեռս մարդ-
14 կան մի՛ անկայց։ Եւ ետ Տէր մահ յԻս-
րայէլ, եւ անկան յԻսրայէլէ եւթանա-
15 սուն հազար արանց։ Եւ առաքեաց Աս-
տուած զհրեշտակն յԵրուսաղէմ սատա-
կել զնա. եւ մինչդեռ սատակէր, ետես
Տէր, եւ զղջացաւ ի վերայ չարութեանն,
եւ ասէ ցհրեշտակն որ սատակէր, Շատ
լիցի քեզ, թողացո զձեռն քո. եւ հրեշ-

[1] Յեբր. գոլոսն   [2] Եբրայեցին յաւելու, ի քաղա-
քէն   [3] Եբր. կամնասայլիւք երկաթեօք և ու-
րագօք   [4] Եբր. Հռափայ, եւ նուաճեցան
նոքա   [5] Եբր. Հռափայ

[6] Եբր. եւթանասուն   [7] Եբր. քում զմին

տակն Տեառն կայր ի կալն Ոռնեայ Յե-
16 բուսացւոյ։ Ամբարձ Դաւիթ զաչս իւր
եւ ետես զհրեշտակն Տեառն, զի կայր
ի մէջ երկնի եւ երկրի, եւ սուրն իւր
ձգեալ ի ձեռին իւրում, եւ կարկառեալ
ի վերայ Երուսաղեմի. եւ անկան Դա-
ւիթ եւ ծերքն զգեցեալ քուրձս ի վե-
17 րայ երեսաց իւրեանց։ Եւ ասէ Դաւիթ
ցԱստուած, Ո՞չ ապաքէն ես ասացի
թուել զժողովուրդդ. ես եմ որ մեղայն,
առնելով արարի զչարիսդ, եւ ոչխարքդ
այդոքիկ զի՞ արարին. Տէր Աստուած,
եղիցի ձեռն քո յիս եւ ի տուն հօր իմոյ,
եւ մի՛ ի ժողովուրդ քո կորուսանել, [1]Տէր։
18 Եւ ասէ հրեշտակն Տեառն ցԳադ, Ա-
սա ցԴաւիթ զի ելցէ կանգնեսցէ սե-
ղան Տեառն ի կալն Ոռնեայ Յեբուսաց-
19 ւոյ։ Եւ ել Դաւիթ ըստ բանին [2]Տեառն,
20 զոր խօսեցաւ յանուն Տեառն։ Եւ դար-
ձաւ Ոռնա, իբրեւ ետես [3]զարքայ եւ
զչորեսին որդիսն նորա ընդ նմա ծած-
կեալս". եւ Ոռնա կասէր ի կալն ցո-
21 րեան։ Եւ եկն Դաւիթ առ Ոռնա [4]եւ
ել Ոռնա" ի կալոյն եւ երկիր եպագ
Դաւթայ ի վերայ երեսաց իւրոց յեր-
22 կիր։ Եւ ասէ Դաւիթ ցՈռնա, Տուր
ինձ զտեղիդ քո զայդ զկալդ, եւ շինե-
ցից այդր սեղան Տեառն, արծաթոյ որ-
քան արժիցէ՝ տացես ինձ զդա. եւ դա-
դարեսցեն հարուածքն ի ժողովրդենէն։
23 Եւ ասէ Ոռնա ցԴաւիթ, Ա՛ռ դու քեզ,
եւ արասցէ տէր իմ արքայ զբարին ա-
ռաջի իւր. ահա ետու զեզինդ յողջա-
կէզս, եւ զփայտ սայլիցդ եւ զցորեանդ
24 ի զոհս, զամենայն ետու քեզ։ Եւ ասէ
արքայ Դաւիթ ցՈռնա, Ոչ այդպէս,
այլ գնելով գնեցից արծաթոյ որքան
արժիցէ. եւ ոչ առից որ ինչ է քո,
25 մատուցանել ողջակէզ ձրի Տեառն։ Եւ
ետ Դաւիթ Ոռնեայ վասն տեղւոյն նո-
26 րա վեց հարեւր սիկղ ոսկւոյ կշռով։ Եւ
շինեաց Դաւիթ անդ սեղան Տեառն, եւ
եհան ողջակէզս եւ [5]վասն փրկութեան".
եւ գոչեաց առ Տէր, եւ լուաւ նմա հրով
յերկնից ի վերայ սեղանոյ ողջակիզին, [1]եւ
27 ծախեաց զողջակէզսն։"Եւ ասէ Տէր ցհրեշ-
տակն, [6]Դարձո զսուր քո" ի պատեանս։
28 Ի ժամանակին յայնմիկ ի տեսանել
Դաւթի, վասն զի լուաւ նմա Տէր ի կալն
Ոռնեայ Յեբուսացւոյ, եզեն անդ զոհս։
29 Եւ խորանն Տեառն զոր արար Մովսէս
յանապատին, եւ սեղան ողջակիզացն
ի ժամանակին յայնմիկ էին [7]ի Բամա
30 Գաբաւոնի. Եւ ոչ կարէր Դաւիթ եր-
թալ առաջի նորա խնդրել յԱստուծոյ,
վասն զի տագնապեցաւ յերեսաց սրոյ
հրեշտակին Տեառն։

ԳԼ. ԻԲ

1 Եւ ասէ Դաւիթ, Այս է տուն Տեառն
Աստուծոյ, եւ այս սեղան ողջակիզաց
2 Իսրայելի։ Եւ ասաց Դաւիթ ժողովել
զամենայն եկս յերկրին Իսրայելի. եւ
կացոյց քարահատս հատանել քարինս
կոփածոյս եւ շինել զտունն Աստուծոյ։
3 Եւ երկաթ բազում ի բեւեռս [8]դրացն եւ
դրանն, եւ զշրջանակսն արար" Դա-
ւիթ, եւ պղինձ բազում յոյժ որոյ ոչ
4 գոյր կշիռ. Եւ մայր փայտս որոյ ոչ գոյր
թիւ, վասն զի բերէին Սիդոնացիքն եւ
Տիւրացիք մայր փայտս յաճախութեամբ
Դաւթի։
5 Եւ ասէ Դաւիթ, Սողոմոն որդի իմ
մանուկ [9]փոքր է. եւ տունս զոր շինէ"
Տեառն՝ մեծ եւ ի վեր անուամբ եւ ի
փառս յամենայն երկրի. պատրաստե-
ցից նմա նիւթս. եւ պատրաստեաց Դա-
ւիթ յաճախութեամբ յառաջ քան զվախ-
6 ճան իւր։ Եւ կոչեաց զՍողոմոն զոր-
դի իւր, եւ պատուիրեաց նմա շինել
[10]զտունն անուան" Տեառն Աստուծոյ Իս-
րայելի։
7 Եւ ասէ Դաւիթ ցՍողոմոն, Որդեակ,
իմ եղեւ ի մտի շինել տուն անուան
8 Տեառն Աստուծոյ. Եւ բան Տեառն ե-
ղեւ առ իս եւ ասէ, Արիւն բազում
հեղեր եւ պատերազմունս մեծամեծս
արարեր. ոչ շինեսցես դու տուն անուան
իմոյ, վասն զի արիւն բազում հեղեր ի
9 վերայ երկրի առաջի իմ. Ահա ծնցի քեզ
որդի, եւ նա եղիցի այր հանգստեան.
եւ հանգուցից զնա յամենայն թշնամեաց
շուրջանակի. քանզի [11]Սողոմոն անուն
է նորա. եւ զխաղաղութիւն եւ զհան-
դարտութիւն տաց ի վերայ Իսրայելի

---

[1] Յեբր. [illegible] [2] Եբր. Գադայ [3] Եբր. զհրեշտակն, եւ չորեքին որդիք նորա ընդ նմա ծածկեալք [4] Եբր. եւ հայեցեալ Ոռնայ ետես զԴաւիթ, և ել [5] Եբր. խաղաղականս [6] Եբր. և նա դարձոյց զսուրն

[7] Այլուրեք՝ ի բարձունս [8] Եբր. փեղկից դրանն եւ՝ վասն շրջանակաց պատրաստեաց [9] Եբր. է եւ մատաղ, եւ տունս որ շինեսցի [10] Եբր. տուն [11] Այլուրեք՝ խաղաղարար

10 յաւուրս նորա ։ Նա շինեսցէ տուն ա-
նուան իմոյ . նա եղիցի ինձ յորդի եւ
ես եղէց նմա ի հայր , եւ [1]ուղղեցից զա-
թոռ թագաւորութեան նորա յԻսրայէլի
11 մինչեւ յաւիտեան ։ Եւ արդ , որդեակ
իմ , եղիցի ընդ քեզ Տէր եւ յաջողես-
ցէ , եւ շինեսցես տուն Տեառն Աստու-
12 ծոյ քո , որպէս խօսեցաւ վասն քո ։ Եւ
տացէ քեզ Տէր հանճար եւ իմաստու-
թիւն , եւ զօրացուսցէ զքեզ ի վերայ
Իսրայէլի , եւ պահեսցես առնել զօրէնս
13 Տեառն Աստուծոյ քո ։ Եւ յայնժամ յա-
ջողեսցիս , եթէ պահեսցես առնել զհրա-
մանս եւ զիրաւունս զոր պատուիրեաց
Տէր Մովսիսի ի վերայ Իսրայէլի . քաջ
լեր եւ զօրացիր . մի երկնչիցես եւ մի
14 զարհուրիցիս ։ Եւ ահա ես ըստ աղքա-
տութեան իմում պատրաստեցի ի տուն
Տեառն ոսկի տաղանդս հարեւր հազար ,
եւ արծաթ տաղանդս հազար հազար ,
եւ պղինձ եւ երկաթ որոյ ոչ գոյ թիւ ,
վասն զի բազում է յոյժ , եւ փայտ եւ
քարինս պատրաստեցի , եւ դու [2]յաւել-
15 ցես յայդ բազմութեամբ՝ Առնել զործ
արուեստից", շինօղս քարանց եւ հիւ-
սունս փայտից , եւ ամենայն իմաստուն՝
16 յամենայն գործս Ոսկւոյն եւ արծաթոյ
եւ պղնձոյ եւ երկաթոյ , որոյ ոչ գոյ
համար . արդ արի եւ արա , վասն զի
Տէր ընդ քեզ է ։
17 Եւ պատուիրեաց Դաւիթ ամենայն
իշխանացն Իսրայէլի օգնել Սողոմոնի
18 որդւոյ իւրում . Եւ ասէ , Ո՞չ ասլաքէն
Տէր[3] ընդ ձեզ է , եւ հանգոյց զձեզ շուր-
ջանակի . վասն զի ետ ի ձեռս [4]ձեր զբնա-
կիչս երկրիդ , եւ հնազանդեցաւ եր-
կիրդ առաջի Տեառն եւ առաջի ժո-
19 ղովրդեան նորա ։ Եւ արդ տուք զսիրտս
ձեր եւ զանձինս ձեր խնդրել զՏէր Ա-
տուած ձեր . արիք եւ շինեցէք զսրբու-
թիւնս Տեառն Աստուծոյ [5]մերոյ , տա-
նել ի ներքս զտապանակ ուխտին Տեառն
եւ զսպաս սրբութեանցն Աստուծոյ ի
տունն զոր շինէք անուան Տեառն ։

ԳԼ. ԻԴ

1 Եւ Դաւիթ էր ծեր եւ լի աւուրբք . եւ
թագաւորեաց Սողոմոն որդի նորա [5]փո-
2 խանակ նորա" ի վերայ Իսրայէլի ։ Եւ
ժողովեաց զամենայն իշխանսն Իսրա-
յէլի , եւ զքահանայս եւ զՂեւտացիս ։
3 Եւ մտին ի թիւն Ղեւտացիքն յերես-
նամենից եւ ի վեր . եւ եղեւ թիւ նո-
ցա ըստ գլխոց իւրեանց՝ արք ութ հա-
4 զար եւ երեսուն ։ Եւ ի նոցանէ գոր-
ծավարք ի վերայ գործոյ տանն , եւ քսան
եւ չորք հազարք դպիրք , եւ դատա-
5 ւորք վեց հազար , Եւ չորք հազարք
դռնապանք , եւ չորք հազարք օրհնիչք
Տեառն՝ նուագարանօքն [6]որովք արա-
6 րին" օրհնել զՏէր ։ Եւ որոշեաց զնո-
սա Դաւիթ [7]յօր ըստ օրէ պաշտամունս"
զորդիսն Ղեւեայ , զԳերսոն , զԿահաթ
եւ զՄերարի ։
7 [8]Եւ Գերսոն եւ" Եղեադան եւ Սե-
8 մէի . [9]Որդի Եղեադանայ իշխան Իս-
9 րայէլի . եւ Եթոմ եւ Յովէլ"։ Եւ որդիք
Սեմեայ՝ Սաղովմիթ եւ Ադիէլ եւ Առան .
երեք սոքա իշխանք տոհմիցն Եղեա-
10 դանայ ։ Եւ որդիքն Սեմեայ՝ Յեթ եւ
Զիզա եւ Յովաս եւ Բարիա . սոքա որ-
11 դիք Սեմեայ չորք։ Եւ էր Յեթ [10]իշխան ,
եւ Զիզա երկրորդ . եւ Յովաս եւ Բա-
րիա ոչ յաճախեցին որդիս , եւ եղեն ի
12 տուն տոհմին ի միում համարի ։ Որդիք
Կահաթու՝ Ամրամ եւ Իսահառ , Քեբրոն
13 եւ Ոզիէլ՝ չորք ։ Որդիք Ամրամայ՝ Ա-
հարոն եւ Մովսէս . եւ որոշեցաւ Ահա-
րոն սուրբ լինել ի սրբութիւնս սրբու-
թեանցն՝ ինքն եւ որդիք իւր մինչեւ
յաւիտեան , ծխել խունկս առաջի Տեառն,
պաշտել եւ աղօթս առնել յանուն նո-
14 րա մինչեւ յաւիտեան ։ Եւ Մովսէս այրն
Աստուծոյ եւ որդիք նորա կոչեցան ի
15 ցեղն Ղեւեայ ։ Որդիք Մովսիսի՝ Գեր-
16 սամ եւ Եղիազար ։ Որդիք Գերսամայ՝
17 Սուբայէլ [10]իշխան . Եւ էր որդի Եղիա-
զարու Հռաբիա [10]իշխան , եւ ոչ գոյր այլ
որդի Եղիազարու . եւ որդիքն Հռաբեայ
18 աճեցին ի բարձրութիւն ։ Որդիք Իսա-
հառայ՝ [11]Սաւուղ եւ Մովէ իշխանք"։
19 Որդիք Քեբրոնի՝ Յերիա [10]իշխան , Ամա-
րիա երկրորդ , եւ Ոզիէլ երրորդ , եւ
20 Յեկեմիաս չորրորդ ։ Որդիք Ոզիելի՝ Մի-
քիա [10]իշխան , եւ Յեսիաս երկրորդ ։
21 Որդիք Մերարեայ՝ Մոողի եւ Մու-

[1] Կամ, Հաստատեցից [2] Ոմանք. յաւելցես յայդ ։ (15) Եւ ընդ քեզ բազմութիւն ձեռագիտաց [3] Ոմանք յաւելուն, Աստուած ձեր [4] Ոմանք. իմ [5] Ոմանք. [illegible]

[6] Ոմանք. զորս արարի [7] Ոմանք. ի բաժինս [8] Ոմանք. Ի Գերսոնեանց [9] Ոմանք. Որդիք Եղեադանայ, իշխան՝ Յեքիէլ, և Զեթոմ եւ Յովէլ, երեք [10] Ոմանք. առաջին [11] Ոմանք. Սաղոմովթ առաջին

մի . որդիք Մոողեայ՝ Եղիազար եւ Կիս ։
22 Եւ մեռաւ Եղիազար , եւ ոչ գոյին նո-
րա որդիք , այլ դստերք միայն . եւ ա-
ռին զնոսա որդիքն Կիսեայ եղբարքն
23 իւրեանց ։ Որդիք Մուսեայ՝ Մոողի եւ
Եդեր եւ Արիմովթ՝ երեք ։
24 Սոքա որդիք Ղեւեայ ըստ տանց տոհ-
մից իւրեանց , իշխանք ցեղիցն իւր-
եանց , ըստ համարոյ իւրեանց եւ ըստ
թուոյ անուանցն ըստ գլխոցն իւրեանց ,
առնէին զգործ պաշտաման ի տան Տեառն
25 ի քսանամենից եւ ի վեր ։ Վասն զի ա-
սաց Դաւիթ , Հանգոյց Տէր Աստուած
զժողովուրդ իւր զԻսրայէլ , եւ [1]բնա-
26 կեաց յԻսրայէլ" մինչեւ յաւիտեան ։ Եւ
Ղեւտացիքն [2]ոչ բառնային ամենեքեան"
զխորանն եւ զամենայն սպաս նորա ի
27 պաշտաման նորին ։ Վասն զի ի բանն
Դաւթայ ի վերջինս էր թիւ որդւոյն
28 Ղեւեայ ի քսանամենից եւ ի վեր ։ Քան-
զի կացոյց զնոսա [3]ի ձեռն որդւոցն Ա-
հարոնի պաշտել ի տանն Տեառն , [4]ի
սրահսն եւ ի սենեակսն եւ ի սրբու-
թիւնսն , եւ ի վերայ ամենայն սրբու-
թեանցն , եւ ի պաշտամունսն տանն Աս-
29 տուծոյ , Հացին առաջադրութեան , եւ
ի վերայ նաշհոյ պատարագացն եւ քա-
քարացն բաղարջացն եւ տապակին , եւ
զանգելոցն իւղով , եւ յամենայն չափսն ,
30 կալ առաւօտուց օրհնել եւ խոստո-
վան լինել Տեառն , նոյնպէս եւ ընդ ե-
31 րեկս , Եւ ի վերայ ամենայն մատուցե-
լոց ողջակիզաց Տեառն , ի շաբաթսն եւ
յամսամուտս եւ ի տօնս , ըստ թուոյն ,
ըստ իրաւանցն , ի վերայ նոցին յամե-
32 նայն ժամ [5]Տեառն ։ Եւ պահէին զպահ-
պանութիւնս խորանին [6]վկայութեան ,
եւ զպահպանութիւնս որդւոցն Ահա-
րոնի եղբարցն իւրեանց պաշտել ի տանն
Տեառն ։

## ԳԼ. ԻԴ

1 Եւ [7]զորդւոցն Ահարոնի դասոյց". որ-
դիք Ահարոնի՝ Նադաբ եւ Աբիուդ , եւ
2 Եղիազար եւ Իթամար ։ Եւ մեռան Նա-
դաբ եւ Աբիուդ առաջի հօրն իւրեանց .
եւ որդիք ոչ գոյին նոցա . եւ քահանա-
յացան Եղիազար եւ Իթամար [8]որդիքն
3 Ահարոնի" ։ Եւ դասոյց զնոսա Դաւիթ ,
[9]զՍադովկ յորդւոցն Եղիազարու , եւ
[10]զԱքիմելէք յորդւոցն Իթամարայ , ըստ
համարոյն իւրեանց եւ ըստ պաշտաման
իւրեանց , [8]եւ ըստ տանց տոհմիցն նո-
4 ցա" ։ Եւ գտան որդիքն Եղիազարու յո-
լովագոյնք յիշխանս զօրաւորացն՝ քան
զորդիսն Իթամարայ , եւ արոշեաց զնո-
սա . զորդիսն Եղիազարու կացոյց իշ-
խանս տանց տոհմիցն , այր վեշտասան .
եւ զորդիսն Իթամարայ ըստ տանց տոհ-
5 միցն , այր ութ ։ Եւ դասոյց զնոսա
[11]ըստ վիճակին նոցա". վասն զի էին իշ-
խանք սրբութեանցն եւ առաջնորդք ի
տանն [12]Տեառն յորդւոցն Եղիազարու եւ
6 յորդւոցն Իթամարայ ։ Եւ գրեաց զնոսա
Սամէաս որդի Նաթանայելի , դպիր Ղեւ-
տացւոյն յանդիման արքայի եւ իշխա-
նացն , եւ Սադովկայ քահանայի եւ Ա-
քիմելեքայ որդւոյ Աբիաթարայ եւ [13]իշ-
խանք տոհմից քահանայիցն եւ Ղեւտաց-
ւոցն ի տանէ ազգին իւրեանց , [14]մի մի
առ որդիսն Եղիազարու , եւ մի մի առ
որդիսն Իթամարայ" ։
7 Եւ ել վիճակն առաջին՝ Յարիբայ , եւ
8 երկրորդն՝ Յադինայ , Երրորդն՝ Քարե-
9 մայ , չորրորդն՝ Սեուրինայ , Հինգե-
րորդն՝ Մեղքեայ , վեցերորդն՝ Մերեայ ,
10 Եւթներորդն՝ Ակկուսայ , ութերորդն՝
11 Աբիայ , Իններորդն՝ Յեսուայ , տասնե-
12 րորդն՝ Սեքենեայ , Մետասաներորդն՝
Եղիաբեայ , երկոտասաներորդն՝ Սաղա-
13 կիմայ , Երեքտասաներորդն՝ Ոփփայ ,
14 չորեքտասաներորդն՝ Իզբայելի , Հնգետա-
սաներորդն՝ Բեղգայ , վեշտասաներորդն՝
15 Եմմերայ , Եւթնուտասաներորդն՝ Եզիրայ ,
16 ութուտասաներորդն Ափեսայ , Իննուտա-
17 սներորդն՝ Փեթեայ , քսաներորդն՝ Եզեկի-
ելի , Քսաներորդ առաջներորդն՝ Յաքինայ ,
18 քսաներորդ երկրորդն՝ Գամուելի , Քսա-
ներորդ երրորդն՝ Դաղայեայ , քսաներորդ
19 չորրորդն՝ Մոզեայ ։ Այս է համար նոցա
ըստ պաշտամանն իւրեանց մտանել ի
տունն Տեառն , ըստ իրաւանց իւրեանց , ի
ձեռն Ահարոնի հօրն իւրեանց . որպէս
պատուիրեաց Տէր Աստուած Իսրայելի ։
20 Եւ յորդւոյն Ղեւեայ մնացելոց՝ յորդ-

[1] Եբր. բնակեցի յԵրուսաղէմ [2] Եբր. ոչ եւս բառնային [3] Եբր. ընդ ձեռամբ [4] Եբր. ի գաւիթսն [5] Եբր. առաջի Տեառն [6] Եբր. ժողովոյ , եւ զպահպանութիւնս սրբութեանն [7] Եբր. դասակարգութիւն որդւոցն Ահարոնի

[8] Յեբր. ղ—ե—ն [9] Եբր. եւ Սադովկ [10] Եբր. Աքիմելէք [11] Եբր. վիճակաւ [12] Եբր. Աս-տուծոյ [13] Եբր. իշխանաց [14] Եբր. մի վասն Եղիազարու , եւ մի վասն Իթամարայ

ւոցն Ամրամայ՝ Սուբայէլ, [1]Յադայիա.
21 Ազայիա. յորդւոցն Ազեայ՝ իշխան՝՝ Յե-
22 սիաս. Յորդւոցն Սաարայեայ՝ Սաղա-
մովթ. Յորդւոցն Սաղամովթայ՝ Յա-
23 նաթ. Եւ յորդւոցն Քեբրոնի՝ Յերիա
առաջին, Ամարիաս երկրորդ, Յեզիէլ
24 երրորդ, Յեկմիաս չորրորդ. Որդիքն
Ոզիելի՝ [2]Միքա առաջին, եւ Յուաս
երկրորդ, եւ որդի Միքայի՝՝ Սամեր.
25 Եւ եղբայր Միքայի՝ Յեսիէ. [3]որդիք Յե-
26 սեայ՝ Զաքարիաս. Որդիք Մերարեայ՝
27 Մոողի եւ Մուսի. [4]Ոզիա որդի նորա,
Բոնիա որդի նորա՝՝, եւ Զաքկուր եւ
28 Ոբրիա. [5]Մոողի, Եղիազար եւ Կիս որ-
29 դի նորա. Եւ որդի Կիսեայ՝ Իսմայէլ՝՝.
30 Եւ որդիք Մուսեայ՝ Մոողի եւ Յեդեր
եւ Յերիմովթ: Սոքա էին որդիք Ղեւտաց-
31 ւոց ըստ տանց տոհմիցն իւրեանց: Ա-
ռին եւ նոքա վիճակս, որպէս եւ եղ-
բարքն իւրեանց որդիքն Ահարոնի, ա-
ռաջի [6]Թագաւորին. եւ Սադովկ եւ Ա-
քիմելէք՝ յիշխանաց տոհմից քահանա-
յիցն, եւ ի Ղեւտացւոցն ցեղքն՝ որք կա-
ցին իբրեւ զերկրորդն իւրեանց զկրտսե-
րագոյնսն՝՝:

Գլ. ԻԵ

1 Զօրս կացոյց Դաւիթ արքայ եւ իշխանք
զօրուն ի գործն, [3]ըստ որդւոցն՝՝ Ասա-
փայ եւ Եմանայ եւ Իդիթունայ. որք
[7]երգէին տաւղօք եւ քնարօք եւ ծնծղա-
յիւք. եւ եղեւ թիւ նոցա որք գոր-
2 ծէին զգործս իւրեանց: [3]Որդիք Ասա-
փայ՝ Զակքուր եւ Յովսէփ եւ Նաթա-
նիաս եւ Յեսիէլ. որդիք [8]Ասափայ մօտ
3 առ թագաւորն: Եւ Իդիթունայ որ-
դիքն՝՝ Գոդողիաս, Եզրի եւ Եսայի եւ
Սեմէի եւ Ասաբիաս եւ Մատաթիաս,
վեց, [9]հանդերձ հարբն իւրեանց Իդի-
թունայ երգէին՝՝ քնարօքն գոհութիւնս
4 եւ օրհնութիւնս Տեառն: [10]Եւ որդիք՝՝
Եմանայ՝ Բոկքիաս եւ Մատթանիաս եւ
Ոզիէլ եւ Սուբայէլ եւ Յերիմովթ եւ Ա-
նանիաս եւ Անան եւ Եղէաթան եւ Գե-
թոդաթի եւ Հռեմովթիեզեր եւ Սեբա-
կատան եւ Մեղեթի եւ Յովթիրի եւ Մա-
5 զիովթ: Ամենեքեան սոքա որդիք Եմա-
նայ, [11]որք նուագէին առաջի՝՝ արքայի
բանիւքն Աստուծոյ՝ բարձրացուցանել
եղջիւրեաւն. եւ ետ Աստուած որդիս Եմա-
6 նայ [12]հնգետասան, եւ դստերս երիս: Ա-
մենեքեան նոքա [13]հանդերձ հարբն՝՝ իւր-
եանց երգէին օրհնութիւնս ի տանն Տեառն
ծնծղայիւք եւ տաւղօք եւ քնարօք [14]մերձ
առ արքայն. եւ՝՝ Ասափ եւ Իդիթուն եւ
7 Եման: Եւ եղեւ թիւ նոցա հանդերձ եղ-
բարբքն իւրեանց, որք ուսեալ էին
զերգսն Տեառն, ամենեքեան հանճարեղքն
երկերիւր եւ ութսուն եւ ութ:
8 Արկին եւ նոքա վիճակս հանապա-
զորդ պաշտաման, ըստ փոքու եւ մեծի՝
9 կատարելոցն եւ որք ուսանէին: Եւ ել
վիճակն առաջին [15]Ասափայ եւ որդւոց
նորա եւ եղբարցն իւրոց. Յովսէփ ա-
ռաջին՝՝. Գոդողիա երկրորդ՝ ինքն եւ
եղբարք իւր եւ որդիք իւր երկոտա-
10 սան. Երրորդ՝ Զակքուր, որդիք իւր եւ
11 եղբարք իւր երկոտասան. Չորրորդ՝
Եզրի, եւ որդիք իւր եւ եղբարք իւր
12 երկոտասան. Հինգերորդ՝ Նաթանիաս,
որդիք իւր եւ եղբարք իւր երկոտասան.
13 Վեցերորդ՝ Բոկքիաս, որդիք իւր եւ եղ-
14 բարք իւր երկոտասան. Եւթներորդ՝
Յեսարէլ, որդիք իւր եւ եղբարք իւր եր-
15 կոտասան. Ութերորդ՝ Եսայիա, որդիք
16 իւր եւ եղբարք իւր երկոտասան. Իննե-
րորդ՝ Մատթանիաս. որդիք իւր եւ եղ-
17 բարք իւր երկոտասան. Տասներորդ՝
Սեմէի, որդիք իւր եւ եղբարք իւր եր-
18 կոտասան. Մետասաներորդ՝ Եզրիէլ,
որդիք իւր եւ եղբարք իւր երկոտա-
19 սան. Երկոտասաներորդ՝ Ասաբիաս, որ-
դիք իւր եւ եղբարք իւր երկոտասան.
20 Երեքտասաներորդ՝ Սուբայէլ, որդիք
21 իւր եւ եղբարք իւր երկոտասան. Չո-
րեքտասաներորդ՝ Մատաթիաս, որդիք
22 իւր եւ եղբարք իւր երկոտասան. Հնգե-

[1]Եբր. յորդւոցն Սաբայելի՝ Յադայիա. (21) Ի Հռաբեայ, յորդւոցն Հռաբեայ՝ առաջին [2]Եբր. Միքա, յորդւոցն Միքայ՝ [3]Եբր. յորդւոցն
[4]Եբր. Որդի Յազեայ՝ Բենոյ. (27) Որդիք Մերարեայ ի Յազեայ՝ Բենոյ եւ Սոհամ [5]Եբր. Ի Մոողեայ՝ Եղիազար, եւ ոչ էին նորա որդիք. (29) Ի Կիսեայ, յորդւոց Կիսեայ՝ Յերամէլ
[6]Եբր. Դաւթի արքայի, եւ Սադովկայ եւ Աքիմելէքայ եւ իշխանաց տոհմից քահանայիցն եւ Ղեւտացւոց. որպէս տոհմք իշխանացն, նոյնպէս եւ կրտսերագոյն եղբարք նոցա [7]Եբր. մարգարէանային [8]Եբր. Ասափայ ընդ ձեռամբ Ասափայ որ մարգարէանայր ընդ ձեռամբ թագաւորին: (3) Յիդիթունայ, որդիք Իդիթունայ [9]Եբր. ընդ ձեռամբ հօր իւրեանց Իդիթունայ մարգարէանային

[10]Եբր. Յեմանայ, որդիք [11]Եբր. տեսանողի
[12]Եբր. չորեքտասան [13]Եբր. ընդ ձեռամբ հօր
[14]Եբր. ի պաշտաման տանն Տեառն ընդ ձեռամբ արքայի
[15]Եբր. Յովսեփայ որ Ասափայն

տասաներորդ՝ Յերիմովթ, որդիք իւր եւ
23 եղբարք իւր երկոտասան. Վեշտասանե-
րորդ՝ Անանիա, որդիք իւր եւ եղբարք
24 իւր երկոտասան. Եւթնուտասներորդ՝
Եզբակասան, որդիք իւր եւ եղբարք
25 իւր երկոտասան. Ութուտասներորդ՝ Ա-
նանի, որդիք իւր եւ եղբարք իւր եր-
26 կոտասան. Իննուտասներորդ՝ Մեղեթի,
որդիք իւր եւ եղբարք իւր երկոտա-
27 սան. Քսաներորդ՝ Եղիաթ, որդիք իւր
28 եւ եղբարք իւր երկոտասան. Քսան եւ
առաջներորդ՝ Յովթերի, որդիք իւր եւ
29 եղբարք իւր երկոտասան. Քսան եւ երկ-
րորդ՝ Գեդողաթի, որդիք իւր եւ եղբարք
30 իւր երկոտասան. Քսան եւ երրորդ՝ Մա-
զիովթ, որդիք իւր եւ եղբարք իւր եր-
31 կոտասան. Քսան եւ չորրորդ՝ Հռեմով-
թիեզեր, որդիք իւր եւ եղբարք իւր
երկոտասան։

## Գլ. ԻԶ

1 Եւ ի զատուցեալս դրանցն յորդւոցն
Կորխայ՝ Մասողամ որդի Կորխայ յորդ-
2 ւոցն Ասափայ, Եւ Մասեղամեայ որդիք
Զաքարիա անդրանիկ, Յադիէլ երկ-
րորդ, Զեբադիաս երրորդ, Նաթանա
3 չորրորդ, Եղամ հինգերորդ, Յովհանան
4 վեցերորդ, Եղիովէ եւթներորդ։ Եւ Ա-
բեդդովմայ որդիք՝ Սամէաս անդրանիկ եւ
Յովազաբադ երկրորդ, Յովաթա եր-
րորդ, Սաքար չորրորդ, Նաթանայէլ
5 հինգերորդ, Ամիէլ վեցերորդ, Իսաքար
եւթներորդ, Փեղաթի ութերորդ. վասն
6 զի օրհնեաց զնա Աստուած։ Եւ Սա-
մէասայ որդւոյ նորա անդրանկան ծնան
որդիք զօրաւորք ի տան հօրն իւրոյ,
7 վասն զի հզօրք էին։ Որդիք Սամէա-
սայ՝ Ադնի եւ Ռափայէլ եւ Յովբեդ
եւ Եզզաբեթ, Աքիու [1]եւ եղբարք իւր"
որդիք զօրաւորք ուժով, Եղիու եւ Սա-
8 մաքիաս [1]եւ Իսրակոս". Ամենեքեան
սոքա որդիք Աբդեդովմայ, ինքեանք եւ
որդիք իւրեանց եւ եղբարք իւրեանց՝
զօրացեալք զօրութեամբ, գործէին զօ-
րութեամբ զգործս, վաթսուն եւ երկու
9 Աբդեդովմայ։ Եւ Մասողամայ՝ որդիք եւ
10 եղբարք հասունք՝ ութուտասան։ Եւ Ով-
սեայ յորդւոցն Մերարեայ որդի մի՝ Շա-
մարի, որում պահէին զգլխաւորու-
թիւն. զի ոչ գոյր անդրանիկն ի միջի,
11 եւ առ եդ զնա հայր իւր սկիզբն. Քեղ-

[1]Եբր. պակասէ

կիա՝ երկրորդ, Տաբէլ՝ երրորդ, Զա-
քարիա՝ չորրորդ. ամենեքեան սոքա Ով-
սայեայ որդիք, եւ եղբարք նորա՝ [2]չո-
12 րեքտասանք։ Սոցա եւ բաժին վիճակաւ
դրանցն գլխաւորութեանց՝ կալ չարա-
թաւոր առաջի եղբարցն իւրեանց, եւ
13 պաշտել ի տան Տեառն։ Եւ արկին վի-
ճակ ըստ փոքուն եւ ըստ մեծին, ըստ
տանց ազգատոհմին իւրեանց ի դրունս
14 դրունս։ Եւ ել վիճակ դրանն արեւե-
լից Սեմեայ. եւ Զաքարեայ որդւոյ նո-
րա խորհրդականի ի միտս իւր, արկա-
նէին վիճակս, եւ ել նմա վիճակն ընդ
15 կողմն հիւսիսոյ։ Եւ Աբդեդովմայ ընդ
հարաւակողմն կոյս. եւ որդւոյ իւրոյ
16 ընդդէմ տանն Ասուփիմ։ [3]Յերրորդեան՝
սեմոյն Ովսայ ընդ արեւմուտս կոյս.
դրամբն հանդերձ սպասաւորին, ելից ճա-
նապարհին, պահ առ պահ ընդ արեւելս"։
17 Իսկ Ղեւտացիքն վեց [4]վեց, յաւուր ընդ
կողմանս հիւսիսոյ չորս չորս, յաւուր ընդ
կողմանս հարաւոյ չորս չորս, [5]յաւուր՝ յԱ-
սափիմն. եւ երկուս երկուս ի փոխանա-
18 կէ։ Եւ ընդ արեւմուտս չորս, եւ ի ճա-
նապարհ երկուս երկուս փոխանակաւ"։
19 Այս վիճակ բաժնիւ դարապանաց որդ-
ւոցն Կորխայ եւ որդւոցն Մերարեայ։
20 Եւ [6]Ղեւտացիքն եղբարբք իւրեանց
հանդերձ" ի վերայ գանձին տանն [7]Տեառն,
21 եւ ի վերայ գանձին սրբոցն սրբոց։ [8]Որ-
դիքն Ղադանայ որդւոյ Գերսամ, Ղա-
դանա իշխանք ազգաց տոհմին Ղա-
22 դանու եւ Գերսամայ, Յէիէլ, Եւ" Զե-
թամ, եւ Յովէլ՝ եղբայր նորա ի վերայ
23 գանձին տան Տեառն։ [9]Եւ Ամրիմ եւ
24 Իսահառ, Քեբրոն եւ Ոզիէլ եւ Սեբիէլ
Գերսամեանց Մուշեանց՝ զօրագլուխք"
25 ի վերայ գանձուցն։ [10]Եւ եղբայր նորա
Եղիազար", Հռաբիա որդի նորա, Եսայի

[2]Եբր. երեքտասան [3]Եբր. Սուփիմայ եւ Ովսեայ ընդ արեւմուտս կոյս առ դրան Սաղեքեթայ յելս ճանապարհին պահ առ պահ [4]Եբր. վեց ըստ արեւելս [5]Եբր. եւ ընդ կողմն Ասուփիմայ երկու երկու։ (18)Ընդ կողմն Փարպարայ յարեւմուտս կոյս ընդ ճանապարհ անդրգոյն՝ չորս, եւ ի Փարպարի՝ երկու [6]Եբր. ի Ղեւտացւոցն Աքիա [7]Եբր. Աստուծոյ [8]Եբր. Յորդւոցն Ղադանայ, յորդւոցն Ղադանայ Գերսամեանց, յիշխանաց տոհմից Ղադանայ Գերսամեանց՝ Յէիէլի (22)Եւ որդիք Յեքիէլայ [9]Եբր. յԱմրամեանց, յԻսահառեանց, ի Քեբրոնեանց, յՈզիէլեանց։ (24)Եւ Սուբայէլ որդի Գերսամայ որդւոյ Մովսիսի՝ վերակացու [10]Եբր. եղբարք նորա, յԵղիազարայ

որդի նորա, Յովրամ որդի նորա,
26 Զեքրի որդի [1]նորա։ Եւ ինքն Սաղոմովթ
եւ եղբարք իւր ի վերայ ամենայն գան-
ձուն սրբոյն սրբոց, զոր նուիրեաց Դա-
ւիթ եւ իշխանք տոհմիցն՝ հազարա-
պետք եւ հարիւրապետք եւ իշխանք զօ-
27 րութեանցն, Զոր առեալ էր [2]ի քաղա-
քաց անտի աւար, եւ նուիրեալ էր ի
նորանէն, զի մի նուազեսցի գործք շի-
28 նուածոյ տանն Աստուծոյ։ Զոր նուի-
րեցին Սամուէլ տեսանողն եւ Սաւուղ
Կիսեանց եւ Աբեններ Ներեանց, եւ Յո-
վաբ որդի Շարուհեայ. եւ ամենայն
նուէրք որ էին ի ձեռս Սաղոմովթայ եւ
29 եղբարց իւրոց. [3]Յեսաարի եւ՝ Քոնենիա
եւ որդիք իւր. [4]եւ գործքն՝ գործոյն
արտաքնոյ ի վերայ Իսրայէլի, [5]զի գրի-
30 չին եւ վճարիչն ի Քեբրոնիա. Սա-
բիաս՝ եւ եղբարք իւր, որդիք զօրու-
թեան հազար եւ եւթն հարեւր, ի վե-
րայ առաջնորդութեան Իսրայէլի յայնկոյս
Յորդանանու գետոյն ընդ արեւմուտս,
յամենայն գործ պաշտաման Տեառն, եւ
31 ի գործ արքունի. [6]Քեբրոնեայ Ուրիա
իշխան, Քեբրոնեայ ազգատոհմօքն իւ-
րեանց հայրենեաց. յամին՝ քառասներորդի
թագաւորութեանն Դաւթի՝ այս յաշ-
խարհագիր անդ գտաւ այր զօրութեանց
32 ի Նոաա Յազերն [7]Գաղաադիտացւոց։ Եւ
եղբարք իւր որդիք զօրաւորք, երկու
հազար եւ եւթն հարեւր, գլխաւորք
տոհմին. եւ կացոյց զնոսա արքայ Դա-
ւիթ ի վերայ ցեղին Ռուբենայ եւ Գա-
դայ եւ կէս ազգին Մանասեան ցեղին,
վասն ամենայն բանից Աստուծոյ, եւ
բանից արքունի։

ԳԼ. ԻԷ

1 Եւ որդիք Իսրայէլի իւրաքանչիւր թուոյ,
նահապետք ազգատոհմին հազարաւորք
եւ հարիւրաւորք. եւ համարակար դպիրք
որ պաշտէին ի ժողովրդեանն զամենայն
համարս արքունի, ըստ իւրաքանչիւր
գործոյն համարոյ ելին եւ մտին ամիս
ամսոյ յամենայն ամիսս [8]տարւոյն։
2 [9]Ընտրութիւն առաջին համարոյ ա-

[1] Եբր. նորա. եւ Սաղոմիթ որդի նորա [2] Եբր. ի պատերազմաց [3] Եբր. Յիսահարեանց [4] Եբր. ի վերայ [5] Եբր. ոստիկանք եւ դատաւորք. (30) ի Քեբրոնեանց Ասաբիա [6] Եբր. ի Քեբրոնեանց Յերիա իշխան ազգատոհմին Քեբրոնեանց, յամին [7] Եբր. Գաղաադու [8] Եբր. տարւոյն քսան եւ չորք հազարք [9] Եբր. Դասակարգութիւն կամ բաժին, որպէս եւ զկնի

առաջնոյ ամսեանն՝ Յեզբաամ [10]եւ Բա-
զկէլ՝, եւ ընտրութիւն եկից նորա քսան
3 եւ չորս հազարք. Յորդւոց Փարեսայ,
որ գլուխ էր ամենայն իշխանացն զօ-
4 րաց եւ ամսեանն առաջնոյ։ Ընտրու-
թիւն ամսոյն երկրորդի՝ Դովդայի [11]եւ
Դաքոթի՝, եւ Մաքաղութովթ առաջնորդ,
եւ ընտրութիւն նորա քսան եւ չորս
5 հազարք։ Իշխան զօրութեան երրորդ
յամսեանն երրորդի՝ Բանեա, [12]Յովադ՝
քահանայի, իշխան. եւ յընտրութեան
6 նորա, քսան եւ չորս հազարք։ Ինքն
Բանեա հզօրագոյն քան զերեսունսն,
եւ ի վերայ երեսնիցն [13]բաժին ընտրու-
7 թեան իւրոյ՝։ Յամսեանն չորրորդի Ա-
սայէլ եղբայր Յովաբու, եւ Զաբդէաս
որդի նորա [14]եւ եղբարք իւր՝ զկնի նո-
րա. եւ ընտրութիւնք բաժնի նորա քսան
8 եւ չորս հազարք։ Հինգերորդ ամսեանն՝
հինգերորդ իշխան Սամաովթ յեզրայ.
եւ բաժին մասին նորա քսան եւ չորս
9 հազարք։ Վեցերորդ ամսեանն՝ վեցե-
րորդ իշխան [15]Եկէս որդի Եկկեայ Թե-
կուացւոյ. եւ մասն բաժնի նորա քսան
10 եւ չորս հազարք։ Յեւթներորդում ամ-
սեանն՝ եւթներորդ իշխան Քեղ Փաղա-
մեանց յորդւոց Եփրեմայ. եւ մասն բաժ-
11 նի իւրոյ քսան եւ չորս հազարք։ Ու-
թերորդ յամսեանն ութերորդի՝ [16]Ուսաք
Եկիեսթայեանց Զարայեայ՝. եւ մասն
բաժնի նորա քսան եւ չորս հազարք։
12 Իններորդ յամսեանն իններորդի՝ Աբիե-
զեր որ յԱնաթովթայն, որ ի Բենիամինի
երկրի. եւ մասն ի բաժնի իւրում քսան
13 եւ չորս հազարք։ Տասներորդ յամսեանն
տասներորդի՝ Մօարի Նետոփաթեանց
Զարայ. եւ մասն բաժնի իւրում քսան
14 եւ չորս հազարք։ Մետասաներորդն
յամսեանն մետասաներորդի՝ Բանեա ի
Փարաթոնեայ, յորդւոցն Եփրեմի, եւ
ի զաւուցեալն նորա քսան եւ չորս
15 հազարք։ Երկոտասաներորդն յամսեանն
երկոտասաներորդի՝ Քաղդայ ի Նետոփա-
թայ, [17]որդի Գոթոնիէլի՝. եւ ի զաւու-
ցեալն նորա քսան եւ չորս հազարք։
16 Եւ ի ցեղիցն Իսրայէլի, Ռուբենի իշ-
խան՝ Եղիազար որդի Զեքրեայ, եւ Շմա-
17 ւոնի՝ Սափատիաս որդի Մաաքեայ, Եւ

[10] Եբր. որդի Զաբդիելի [11] Եբր. Ահովացի [12] Եբր. որդի Յովիադայ [13] Եբր. եւ ի բաժնի նորա Ամիզաբադ որդի նորա [14] Եբր. զկնի [15] Եբր. Իրաս [16] Եբր. Սոբեքայ Ախուացի Զարայեանց [17] Եբր. Գոթոնիէլեան

Ղեւեայ՝ Ասաբիա որդի Կամուելի, եւ
18 Ահարոնի՝ Սադովկ, Եւ Յուդայ՝ Եղիաբ
յեղբարցն Դաւթի, եւ Իսաքարայ՝ Ա-
19 մարիաս որդի Միքայելի, Եւ Զաբու-
ղոնի՝ Սամէաս որդի Աբդեայ, եւ Նեփ-
20 թաղիմայ՝ Յերիմովթ որդի Ոզիելի, Եւ
Եփրեմի՝ Ովսեր որդի Ոզեայ, եւ կիսոյ
ցեղին Մանասէի՝ Յովէլ որդի Փադայեայ,
21 Եւ կիսոյ ցեղին Մանասէի որ էր ի Գա-
ղաադ՝ Յադդայի որդի Զաքարեայ, որդ-
ւոցն Բենիամինի՝ Ասիէլ որդի Աբեննե-
22 րայ, Դանայ՝ Եզրիէլ որդի Յովրամայ.
սոքա էին նահապետք ցեղիցն Իսրա-
յելի։
23 Եւ ոչ ա՛ռ Դաւիթ զթիւն նոցա ի
քսանամենից եւ ի վեր. վասն զի Տէր
ասաց բազմացուցանել զԻսրայէլ իբրեւ
24 զաստեղս երկնից։ Եւ Յովաբ որդի Շա-
րուհեայ սկսաւ թուել զժողովուրդն,
եւ ոչ կատարեաց. եւ եղեւ յաղագս
այնորիկ բարկութիւն ի վերայ Իսրայե-
լի. եւ ոչ յարդեցաւ թիւն ի գիրս բա-
նից աւուրց թագաւորին Դաւթի։
25 Եւ ի վերայ գանձուց արքային Ազա-
մովթ որդի Ազիելի. եւ ի վերայ գան-
ձուց անդաստանաց ի գեղսն եւ ի տունս
եւ յաշտարակս՝ Յովնաթան որդի Ո-
26 զեայ. Եւ ի վերայ երկրագործացն որք
27 գործէին՝ Եզրաս որդի Քեղուբայ. Եւ
ի վերայ [1]ագարակացն՝ Սեմէի Արիմա-
թացի. եւ ի վերայ [2]շտեմարանացն գի-
28 ղից գինւոյն″ Զաբդի որդի Սեփիրայ։ Եւ
ի վերայ ձիթենեացն եւ մորաթզենեացն
որք ի դաշտս՝ Բաղղանա [3]որդի Գեդէո-
նի″. եւ ի վերայ շտեմարանաց ձիթոյն՝
29 Յովաս. Եւ ի վերայ արջառոց [4]արօտա-
կանաց որք էին″ ի հովիտն՝ Սամփսա
30 որդի Ազայեայ. Եւ ի վերայ ուղտուցն՝
Ուբիաս Իսմայելացի. եւ ի վերայ իշոցն՝
31 Յադիաս Մարաթոնեացի. Եւ ի վերայ
հօտիցն՝ Յազազ Ագարացի. ամենեքեան
սոքա վերակացուք ստացուածոյն Դաւ-
թի արքայի։
32 Եւ Յովնաթան հօրեղբայր Դաւթի՝
խորհրդակից, այր հանճարեղ. եւ ինքն
դպրապետ. եւ Յէքիէլ որդի Աքամենայ
33 ընդ որդիս արքայի։ Եւ Աքիտոփէլ՝
խորհրդակից արքայի, եւ Քուսի [5]ա-
34 ռաջին բարեկամ արքայի, Եւ [6]զկնի
նորա Աքիտոփէլ մերձ ի նա, եւ Յովի-
դայեայ″ որդի Բանեայ եւ Աբիաթար.
եւ զօրավար զօրացն արքայի Յովաբ։

## ԳԼ. ԻԸ

1 Եւ ժողովեաց Դաւիթ զամենայն իշ-
խանսն Իսրայելի, զիշխանս [7]զատուո-
րացն եւ զամենայն իշխանս օրամակիցն՝
ի սպաս անձնապահաց″ թագաւորին,
եւ զիշխանս հազարաւորացն եւ հարիւ-
րաւորացն եւ գանձապահացն, որք էին
ի վերայ ստացուածոյն [8]նորա, եւ″ զզօ-
րաւորսն եւ զպատերազմօղս զօրավա-
2 րացն յԵրուսաղէմ։ Եւ եկաց Դաւիթ
արքայ [9]ի մէջ եկեղեցւոյն″ եւ ասէ,
Լուարուք ինձ, եղբարք իմ եւ ժողո-
վուրդ իմ. ի սրտի իմում եղեւ շինել
տուն հանգստեան տապանակի ուխտին
Տեառն, եւ կայան ոտից [10]Տեառն մե-
րոյ. եւ պատրաստեցի ես ի շինակու-
թիւնն յայն զկազմածդ զայդ, ոսկի եւ
արծաթ եւ պղինձ եւ արոյր եւ երկաթ
3 եւ փայտ բազում″. Եւ ասաց Աստուած
ցիս, Ոչ շինեսցես դու ինձ տուն, ա-
նուանել զանուն իմ ի վերայ նորա. վասն
զի այր պատերազմօղ ես դու, եւ հե-
4 ղեր արիւն բազում։ Եւ ընտրեաց Տէր
[11]Աստուած յամենայն ազգաց զԻսրայէլ,
եւ յամենայն Իսրայէլէ՝ ընտրեաց զՅու-
դաս, կարգել զթագաւորութիւն իւր յա-
ւիտեան″. եւ ի տանէն Յուդայ ընտրեաց
զտուն հօր իմոյ, եւ յորդւոց հօր իմոյ կա-
մեցաւ զիս լինել թագաւոր ի վերայ ամե-
5 նայն Իսրայելի։ Եւ յամենայն որդւոց ի-
մոց, վասն զի որդիս բազումս ետ ինձ Տէր,
ընտրեաց զՍողոմոն որդի իմ, նստուցանել
յաթոռ թագաւորութեանն Տեառն ի վե-
6 րայ Իսրայելի։ Եւ ասաց ցիս Աստուած,
Սողոմոն որդի քո շինեսցէ զտուն իմ եւ
[12]զսրահն իմ. վասն զի ընտրեցի զնա լինել
7 ինձ որդի, եւ ես եղէց նմա ի հայր. Եւ
[13]ուղղեցից զթագաւորութիւն նորա մին-
չեւ յաւիտեան, եթէ զօրասցի պահել զպա-

[1]Եբր. այգեաց [2]Եբր. արդեանց այգեաց, շտեմարանաց գինւոյ [3]Եբր. Գադերացի [4]Եբր. արօտականաց որ ի Սարոն՝ Սետրա Սարոնացի. եւ ի վերայ արջառոց [5]Եբր. Արաքացի

[6]Եբր. զկնի Աքիտոփելայ Յովիադա [7]Եբր. ցեղիցն և զիշխանս դասակարգութեանց ի սպաս [8]Եբր. արքայի և որդւոց նորա, զներքինիս եւ [9]Եբր. ի վերայ ոտից իւրոց [10]Եբր. Աստուծոյ մերոյ, և պատրաստեցի ի շինել [11]Եբր. Աստուած Իսրայէլի յամենայն տանէ հօր իմոյ զիս՝ լինել թագաւոր ի վերայ Իսրայէլի յաւիտեան. զի ընտրեաց զառաջնորդն ի Յուդայէ [12]Եբր. զգաւիթս [13]Կամ, Հաստատեցից

պատուիրանս իմ եւ զիրաւունս իմ որպէս յա-
8 ւուրս յայսմիկ ։ Եւ արդ [1]դիք առաջի
երեսաց ամենայն" եկեղեցւոյս Տեառն ,
եւ յականջս Աստուծոյ մերոյ, պահեցէք
եւ խնդրեցէք զամենայն պատուիրանս
Տեառն Աստուծոյ ձերոյ , զի ժառան-
գիցէք զերկիրս բարի , եւ ժառանգե-
ցուցանիցէք որդւոց ձերոց յետ ձեր
մինչեւ յաւիտեան ։
9 Եւ դու , Սողոմոն որդի իմ , ծանիր
զԱստուած [2]հարցն քոց", եւ ծառայեա
նմա կատարեալ սրտիւ , եւ մտօք կա-
մաց քոց . վասն զի զամենայն սիրտս
քննէ Տէր եւ զամենայն խորհուրդս ճա-
նաչէ . եթէ խնդրեսցես զնա՝ գտցի քեզ,
եւ եթէ թողցես զնա՝ լքցէ զքեզ ի
10 սպառ ։ Տես այժմ, զի Տէր ընտրեաց
զքեզ շինել նմա տուն ի սրբութիւն .
զօրացիր եւ արա ։
11 Եւ ետ Դաւիթ Սողոմոնի որդւոյ իւ-
րում զօրինակ [3]տաճարին եւ սենեկաց
նորա եւ գանձարանաց նորա եւ վեր-
նատանցն եւ շտեմարանացն ներքնոց
12 եւ տանն քաւութեան . Եւ [4]զօրինակ
զոր ունէր ի մտի իւրում՝ սրահից" տանն
Տեառն , եւ զամենայն շտեմարանացն
շուրջանակի , յամբարս տանն *Տեառն
13 եւ մթերից սրբութեանցն . Եւ [5]Ճա-
ցորդացն յօրամտից ի պաշտօն քահա-
նայիցն եւ Ղեւտացւոց յամենայն գործ
պաշտամանց տանն Տեառն , եւ շտեմա-
րանաց անօթոց սպասուց տանն Տեառն ։
14 Եւ զմէտս կշռոց նոցա՝ զոսկւոյ եւ
15 զարծաթոյ, Զկշիռ աշտանակաց եւ նոցա,
16 եւ զբազմակողմն նմանութիւն՝ , Եւ
զկշիռ սեղանոցն առաջաւորութեան, եւ
զիւրաքանչիւր ոսկւոյ ոսկեղէն սեղա-
17 նոց. Նոյնպէս եւ զարծաթեղինացն . Եւ
զմսահանացն եւ զնուիրանոցացն եւ
[6]զտաշտիցն ոսկեղինաց , եւ զկշիռ
ոսկւոյ եւ արծաթոյ, եւ զափոցն զիւրա-
18 քանչիւր ուրուք" ։ Եւ զսեղանոյ խնկոցն
ի մաքուր ոսկւոյ զկշռութիւնն եցոյց
նմա , եւ զօրինակ [7]քերովբէիցն՝ որոց
տարածեալ էր զթեւսն իւրեանց եւ հո-
վանի ունէին ի վերայ տապանակի ուխ-
19 տին Տեառն ։ [8]Զամենայն զրով ի ձե-
ռանէ Տեառն ետ Դաւիթ Սողոմոնի ,
ըստ եկելոյ ի նմա իմաստութեանն եւ
ըստ օրինակին" ։
20 Եւ ասէ Դաւիթ ցՍողոմոն որդի իւր ,
Զօրացիր եւ քաջ լեր , արա եւ մի եր-
կնչիր եւ մի զարհուրեսցիս . վասն զի
Տէր Աստուած իմ է ընդ քեզ . ոչ թողցէ
զքեզ եւ ոչ լքցէ՝ մինչեւ կատարեսցես
զամենայն գործ սպասու տանն Տեառն ։
[9]Եւ ահա այդ է օրինակ տաճարին եւ
սենեկաց նորա եւ սրահից նորա եւ վեր-
նատանցն եւ շտեմարանացն , ներքնա-
տանցն եւ տանն քաւութեան . եւ օ-
21 րինակ տաճարին Տեառն այդ է", Եւ
[10]օրամտից քահանայիցն եւ Ղեւտացւոց,
յամենայն ի պաշտամունս տանն Աստու-
ծոյ . եւ ընդ քեզ եղիցի յամենայն իրս
ամենայն ոք որ յօժարեսցէ իմաստու-
թեամբ ըստ համօրէն արուեստից , իշ-
խանքն եւ ամենայն ժողովուրդ յա-
մենայն ի բանս քո ։

Գլ. ԻԹ

1 Եւ ասէ Դաւիթ արքայ ցամենայն ե-
կեղեցին , Սողոմոն որդի իմ [11]զոր ընտ-
րեաց իւր *Տէր , մանուկ փոքր է , եւ
գործս մեծ է . վասն զի ոչ մարդոյ է
2 շինուածս , այլ Տեառն Աստուծոյ ։ Ըստ
ամենայն զօրութեան իմոյ պատրաս-
տեցի նիւթս տանն Աստուծոյ իմոյ ,
ոսկի եւ արծաթ , պղինձ եւ երկաթ ,
փայտս եւ քարինս անկեանց եւ կամա-
րաց , եւ քարինս ընտիրս եւ ակունս
պատուականս , եւ այլ պատրաստութիւն
3 բազում ։ Եւ եւս վասն հաճոյն լինելոյ
[12]իմ ի տան Աստուծոյ իմոյ եղեւ ինձ զոր

[1] Ոմն. առաջի աչաց ամենայն Իսրայէլի [2] Ոմն. հօր քո [3] Ոմն. սրահին [4] Ոմն. զօրինակն ամենայնի որ եղեւ Հոգւով տանն վասն գաւթից [*] Ոմն. Աստուծոյ [5] Ոմն. հրամայեաց վասն դասակարգութեան քահանայիցն եւ Ղեւտացւոց, եւ վասն ամենայն գործոյ պաշտամանց տանն Տեառն, եւ վասն ամենայն անօթոց սպասու տանն Տեառն . (14) Վասն կշռոյ ոսկւոյն, վասն ամենայն ոսկեղէն անօթոց սպասու եւ պաշտաման, վասն կշռոյ ամենայն արծաթեղէն անօթոց. վասն ամենայն անօթոյ պաշտաման եւ պաշտաման. (15) Եւ վասն կշռոյ ոսկեղէն աշտանակաց, եւ վասն կշռոյ ամենայն ոսկեղէն ճրագարանաց նորա , եւ վասն կշռոյ ամենայն աշտանակի արծաթոյ եւ ճրագարանաց նորա, ըստ պիտոյից իւրաքանչիւր աշտանակի

[6] Ոմն. զբաժակացն յոսկւոյ սրբոյ, եւ զտաշտիցն ոսկեղինաց, զկշիռ իւրաքանչիւր տաշտի, եւ զտաշտիցն արծաթեղինաց , զկշիռ իւրաքանչիւր տաշտի [7] Ոմն. կառաց քերովբէիցն [8] Ոմն. Այս ամենայն գրով ի ձեռանէ Տեառն ծանուցաւ ինձ , ամենայն գործ օրինակիս այսորիկ ։ [9] Ոմն. դ—լ—ե [10] Ոմն. ահա դասակարգութիւնք [11] Ոմն. զոր միայն [12] Ոմն. ինձ տան Աստուծոյ իմոյ զարծաթն եւ ոսկին որ էր իմ առանձինն՝

նուիրեցից Տեառն, ոսկի եւ արծաթ.
եւ անհատոյիկ՟ եւառ զայդ ի տուն Ա-
ստուծոյ իմոյ [1]ի բարձրութիւն. բաց
յայնցանէ զոր պատրաստեցի ի տուն
4 սրբութեանցն, Երիս հազարս տաղանդս
ոսկի [2]ի Սուփիրայ, եւ եւթն հազար
տաղանդ ընտիր արծաթ, օծանել նո-
5 քօք զորմս [3]տաճարին ի ձեռն՟ արուես-
տաւորաց. եւ որ ոք յօժարիցէ մտօք
[4]լնուլ զձեռս իւր՟ այսօր Տեառն։
6 Եւ յառաջամատոյք եղեն իշխանք տոհ-
միցն եւ իշխանք որդւոցն Իսրայելի,
հազարապետք եւ հարիւրապետք եւ վե-
րակացուք [1]գործոյն, եւ զաւառապետք՟
7 արքայի. Եւ ետուն ի գործ տանն [5]Տեառն
ոսկի՝ տաղանդս հինգ հազար, եւ բեւր
դահեկան. եւ արծաթ՝ տաղանդս տասն
հազար. եւ պղինձ՝ տաղանդս բեւր եւ
ութ հազար, եւ երկաթ՝ տաղանդս հա-
8 րեւր հազար։ Եւ այր ուրուք գտաւ քար
պատուական՝ ետուն ի շտեմարանս տանն
Տեառն, ի ձեռս Յեքիելի որդւոյ Գեր-
9 սոնի։ Եւ ուրախացաւ ժողովուրդն յա-
ղագս յառաջամատոյց լինելոյն. վասն զի լի
սրտիւ եղեն յառաջամատոյք Տեառն. եւ
Դաւիթ արքայ ուրախ եղեւ մեծապէս։
10 Եւ օրհնեաց արքայ Դաւիթ զՏէր ա-
ռաջի եկեղեցւոյն՝ եւ ասէ, Օրհնեալ [6]է
Տէր Աստուած Իսրայելի հայրն մերոյ
11 յաւիտենից մինչեւ յաւիտեանս. Քո է,
Տէր, մեծութիւն եւ զօրութիւն եւ պար-
ծանք եւ յաղթութիւն եւ կարողու-
թիւն. վասն զի [7]դու ամենեցուն որք
են յերկինս եւ ի վերայ երկրի՝ տիրես.
յերեսաց քոց զողան ամենայն թագա-
12 ւորք եւ ազգք՟։ Ի քէն է մեծութիւն
եւ փառք. դու ես ամենեցուն իշխան,
[1]Տէր, եւ իշխան ամենայն իշխանու-
թեանց.՟ ի ձեռին քում է զօրութիւն
եւ հարստութիւն, եւ ի ձեռին քում
ամենակալ մեծութիւն՝ զօրացուցանել
13 զամենայն։ Եւ արդ, [8]Տէր, գոհանամք
զքէն, եւ օրհնեմք զանուն պարծանաց
14 քոց։ Ո՞ եմ ես, եւ ո՞ է ժողովուրդ [9]քո,
զի կարացաք յօժարամիտ լինել քեզ
յայսմ ամենայնի. վասն զի քո է ամե-
նայն ինչ, եւ ի քոյոց տուաք քեզ։
15 Քանզի պանդուխտք եմք մեք առաջի քո
եւ նժդեհք՝ որպէս ամենայն հարք մեր.
իբրեւ զստուեր են աւուրք մեր ի վե-
րայ երկրի, եւ ոչ գոն մեր մնացուածք
16 ինչ։ Տէր Աստուած մեր, ամենայն բազ-
մութիւնս այս զոր պատրաստեցի շինել
զտուն անուան սրբութեան քո, է ի ձե-
ռանէ քումմէ, եւ քո է ամենայն ինչ։
17 Եւ ծանեայ, Տէր, եթէ դու ես որ քննես
զսիրտս, զարդարութիւն սիրես. եւ
[10]մեք պարզ սրտիւք յօժարամիտք [11]ե-
ղեաք յայսմ ամենայնի. եւ արդ զժո-
ղովուրդս քո որ գտաւ աստ՝ տեսի ու-
րախութեամբ լի, եղեալ առ քեզ յօ-
18 ժարամիտ։ Տէր Աստուած Աբրահամու
եւ Իսահակայ եւ Իսրայելի հարցն մե-
րոց, պահեա զայս ի միտս եւ ի սիրտ
ժողովրդեան քո յաւիտեան, եւ ուղ-
19 ղեա զսիրտս նոցա առ քեզ։ Եւ Սողո-
մոնի որդւոյ իմում տուր սիրտ բարի՝
առնել զպատուիրանս քո եւ զվկայու-
թիւնս քո եւ զհրամանս քո, եւ [12]ի կա-
տարումն ածել զպատրաստութիւն տան
քո՟։
20 Եւ ասէ Դաւիթ ցամենայն եկեղեցին,
Օրհնեցէք զՏէր Աստուած ձեր։ Եւ օրհ-
նեաց ամենայն եկեղեցին զՏէր Աստուած
հարցն իւրեանց, եւ խոնարհեցուցեալ
զծունկս՝ երկիր պագին Տեառն եւ ար-
21 քային։ Եւ [13]եղեն Դաւիթ՟ Տեառն զոհս,
եւ [14]մատոյց ողջակէզս Աստուծոյ՟ ի վա-
ղիւն առաջնոյ աւուրն, զուարակս հա-
զար, խոյս հազար, գառինս հազար, եւ
զնուէրս նոցա եւ զզոհսն յաճախութեամբ
22 ամենայն Իսրայելի։ Կերան եւ արբին ա-
ռաջի Տեառն յաւուր յայնմիկ ուրախու-
թեամբ[15]. եւ թագաւորեցուցին երկրորդ
անգամ զՍողոմոն որդի Դաւթի, եւ օ-
ծին զնա Տեառն ի թագաւոր, եւ զՍա-
23 դովկ՝ ի քահանայութիւն։ Եւ նստաւ
Սողոմոն յաթոռ[16] Դաւթի հօր իւրոյ, եւ
յաջողեցաւ. եւ հնազանդեցաւ նմա ա-
24 մենայն Իսրայէլ։ [17]Իշխանք եւ զօրաւորք

[1] Եբր. պալատ [2] Եբր. Ոփիրայ [3] Եբր. տա-
ճարին. (5) Վասն ոսկեղինաց՝ ոսկի, եւ վասն
արծաթեղինաց՝ արծաթ, եւ վասն ամենայն
գործոյ որ ի ձեռն [4] Այսինքն՝ մատուցանել
ընծայ [5] Եբր. Աստուծոյ [6] Եբր. ես [7] Եբր. քո է
ամենայն որ յերկինս և յերկրի. Տէր, քո է թա
գաւորութիւն եւ դու ես բարձրացեալ ի վե-
րայ ամենեցուն իբր գլուխ [8] Եբր. Աստուած
մեր [9] Եբր. իմ

[10] Եբր. ես [11] Եբր. եղէ [12] Եբր. կատարել զա-
մենայն եւ շինել զտաճարն վասն որոյ պատ-
րաստեցի [13] Եբր. զենին [14] Եբր. մատուցին
ողջակէզս Տեառն [15] Եբր. յէջին յաւելու,
մեծաւ [16] Եբր. յէջին յաւելու, Տեառն ի թա-
գաւոր փոխանակ [17] Եբր. Համօրէն իշխանք

եւ ամենայն որդիք արքային Դաւթի
25 [1]հօրն նորա հնազանդեցան նմա։ Եւ
մեծացոյց Տէր զՍողոմոն ի վերուստ ա-
ռաջի ամենայն Իսրայէլի, եւ ետ նմա
փառս թագաւորութեան, որ ոչ ումեք
եղեւ ամենեցուն թագաւորացն որք յա-
ռաջ քան զնա[2]։
26 Եւ Դաւիթ որդի Յեսսեայ թագաւո-
րեաց ի վերայ [3]Իսրայէլի ամս քառա-
27 սուն. ի Քեբրոն ամս եւթն, եւ յԵրու-
28 սաղէմ ամս երեսուն եւ երեք։ Եւ
վախճանեցաւ բարի ծերութեամբ, լի
աւուրք, մեծութեամբ եւ փառօք. եւ
թագաւորեաց Սողոմոն որդի նորա փո-
29 խանակ նորա։ Եւ [4]Մնացեալ բանք ար-
քային Դաւթի՝ առաջինք եւ վերջինք,
գրեալ են ի բանս Սամուէլի տեսանողի
եւ ի բանս Նաթանայ մարգարէի եւ ի
30 բանս Գադայ տեսանողի, Յաղագս ա-
մենայն թագաւորութեան նորա եւ
[5]զօրութեան նորա, եւ [6]ժամանակք
որ եղեն նորա ի վերայ Իսրայէլի եւ
ի վերայ ամենայն թագաւորութեանց
երկրի։

---

[1] Եբր. հնազանդեցան արքային Սողոմոնի [2] Եբր. բոլորեքեան յառաջ. ի վերայ Իսրայէլի [3] Եբր. ամենայն Իսրայէլի։ (27) Եւ աւուրք յորս թագաւորեաց ի վերայ Իսրայէլի՝ եղեն քառասուն ամք

[4] Եբր. գործք [5] Եբր. քաջութեան [6] Եբր. յաղագս անցից որ անցին ընդ նա եւ ընդ Իսրայէլ եւ ընդ ամենայն թագաւորութիւնս աշխարհաց

# ԳԼՈՒԽՔ ԵՐԿՐՈՐԴ ՄՆԱՑՈՐԴԱՑ

# ՄՆԱՑՈՐԴԱՑ

## ԵՐԿՐՈՐԴ

### ԳԼՈՒԽ Ա

1 Եւ զօրացաւ Սողոմոն որդի Դաւթի
ի թագաւորութեանն իւրում, եւ
Տէր Աստուած իւր ընդ նմա էր, եւ մեծա-
2 ցոյց զնա ի բարձրութիւն։ Եւ ասաց Սո-
ղոմոն ցամենայն Իսրայէլ, ցհազարապետս
եւ ցհարիւրապետս եւ ցդատաւորս եւ ցա-
3 մենայն իշխանս[1] տոհմիցն։ Եւ գնաց Սո-
ղոմոն եւ ամենայն եկեղեցին ընդ նմա՝ ի
բարձրաւանդակն Գաբաւոնի, ուր էր անդ
խորանն վկայութեան Աստուծոյ զոր
արար Մովսէս ծառայ Տեառն յանապա-
4 տին. Բայց զտապանակն Աստուծոյ ե-
հան Դաւիթ ի [2]քաղաքէն Կարիաթարի-
մայ, վասն զի պատրաստեաց նմա խո-
5 րան Դաւիթ յԵրուսաղէմ. Եւ սեղանն
պղնձի՝ զոր արար Բեսելիէլ որդի Ու-
րեայ որդւոյ Ովրայ՝ անդ էր առաջի
խորանին Տեառն. եւ խնդրեաց [3]ինքն
6 Սողոմոն եւ եկեղեցին։ Եւ [4]եհան անդ
Սողոմոն ի վերայ պղնձի սեղանոյն ա-
ռաջի Տեառն ի խորանին, եւ մատոյց
ի վերայ նորա ողջակէզս հազար։
7 Ի գիշերին յայնմիկ երեւեցաւ Աստուած
Սողոմոնի, եւ ասէ ցնա, Խնդրեա, զի՞նչ
8 տաց քեզ։ Եւ ասէ Սողոմոն ցԱստուած,
Դու արարեր ընդ Դաւթի հօր իմում ո-
ղորմութիւն մեծ, եւ թագաւորեցուցեր
9 զիս փոխանակ նորա. Եւ արդ, Տէր
Աստուած, հաստատեսցի [5]անուն քո
ի վերայ՝՝ Դաւթի հօր իմոյ. վասն զի
դու թագաւորեցուցեր զիս ի վերայ բա-
զում ժողովրդեանս, որ է իբրեւ զհող
10 երկրի։ Եւ արդ զիմաստութիւն եւ զհան-
ճար տացես ինձ, զի ելանիցեմ առաջի
ժողովրդեանս քո այսորիկ եւ մտանի-
ցեմ. վասն զի ո՞ դատիցի զժողովուրդս
11 քո զմեծ զայս։ Եւ ասէ Աստուած ցՍո-
ղոմոն, Փոխանակ զի եղեւ այդ ի սրտի
քում, եւ ոչ խնդրեցեր մեծութիւն ըն-
չից, ոչ փառս եւ ոչ զանձինս հակա-
ռակորդաց քոց, եւ աւուրս բազումս
ոչ խնդրեցեր, այլ խնդրեցեր դու քեզ
զիմաստութիւն եւ զհանճար, զի դա-
տեսցես զժողովուրդ իմ յորոյ վերայ
12 թագաւորեցուցի զքեզ, Զիմաստութիւն
եւ զհանճար տամ քեզ, եւ զմեծութիւն
եւ զինչս եւ զփառս տաց քեզ. որպէս
զի ոչ եղեւ նման քեզ ի թագաւորս յա-
ռաջագոյն քան զքեզ, եւ զկնի քո ոչ
13 լինիցի այսպէս։ Եւ եկն Սողոմոն [6]ի
Բամայ Գաբաւոնի յԵրուսաղէմ, յերե-
սաց խորանին վկայութեան, եւ թա-
գաւորեաց ի վերայ Իսրայէլի։
14 Եւ ժողովեաց Սողոմոն կառս եւ հե-
ծեալս, եւ եղեն նմա հազար եւ չորեք
հարիւր կառք եւ երկոտասան հազար
հեծելոց. եւ եթող զնոսա ի քաղաքս [7]հե-
ծելոցն, եւ զօրն էր՝՝ ընդ արքայի յԵ-
15 րուսաղէմ։ Եւ եդ արքայ զոսկի եւ զար-
ծաթ իբրեւ զքարինս յԵրուսաղէմ, եւ
զմայրս [2]ի Հրէաստանի, իբրեւ զմոլա-
16 թզենիս ի դաշտի բազմութեամբ։ Եւ
ելք ձիոց Սողոմոնի յԵգիպտոսէ, եւ
[8]գինք վաճառուց արքայի երթեալ
17 գնէին՝՝, Եւ ելանէին ածէին յԵգիպտոսէ
կառս մի՝ վեց հարիւր արծաթոյ, եւ ձի
հարիւր եւ յիսուն. եւ այնպէս ամե-
նայն թագաւորայն Քետացւոց եւ թա-
գաւորայն Ասորեաց ի ձեռս նոցա բերէին։

### ԳԼ. Բ

1 Եւ ասաց Սողոմոն շինել տուն ա-
նուան Տեառն, եւ տուն թագաւորու-
2 թեան իւրոյ։ Եւ ժողովեաց Սողոմոն
եւթանասուն հազար արանց բեռնա-
կրաց, եւ ութսուն հազար քարահա-

---

[1] Եբրայեցին [illegible], ամենայն Իսրայէլի, գլխաւորաց [2] Յեբր. [illegible] [3] Եբր. զայն [4] Կամ, ել [5] Եբր. բան քո ընդ

[6] Այսինքն, ի բարձրաւանդակէն [7] Եբր. կառաց և [8] Եբր. խումբք վաճառականաց արքային առնուին երամակս գնոց

տաց ի լերինս. եւ վերակացուք նոցա
երեք հազար եւ վեց հարիւր։
3 Եւ առաքեաց Սողոմոն առ Քիրամ ար-
քայ Տիւրոսի եւ ասէ, Որպէս արարեր ընդ
հօրն իմոյ Դաւթի, եւ ետուր նմա մայր
փայտս՝ շինել իւր տուն բնակելոյ ի նմա,
4 Եւ արդ ահա ես [1]որդի նորա՛՛ շինեմ տուն
անուան Տեառն Աստուծոյ իմոյ, սրբել
զնա նմա, ծխել առաջի նորա [2]խունկս
եւ առաջաւորութիւնս յամենայն ժամ,
եւ մատուցանել ողջակէզս [1]հանապազ
առաւօտուց եւ երեկորին, եւ ի շաբաթս
եւ յամսամուտս եւ ի տօնս Աստուծոյ
5 մերոյ, յաւիտեան զայն յԻսրայէլի։ Եւ
տունս զոր ես շինեմ՝ մեծ է. վասն զի
մեծ է Աստուած մեր քան զամենայն
6 աստուածս. Եւ ո՛ կարասցէ շինել նմա
տուն. զի եթէ երկինք եւ երկինք եր-
կնից ոչ տանին [3]զփառս նորա, եւ զի՞նչ
ես՛՛ շինեցից նմա տուն, այլ զի ծխես-
7 ցեն խունկս առաջի նորա։ Եւ արդ ա-
ռաքեա ինձ այր իմաստուն, որ գիտի-
ցէ գործել զոսկի եւ զարծաթ եւ զպղինձ
եւ զերկաթ եւ զծիրանի եւ զկարմիր
եւ զկապուտակն [1]եւ զբեհեզն՛՛, եւ որ
գիտիցէ քանդակել զքանդակս ընդ ի-
մաստունս իմ, որք են ի Հրէաստանի
եւ յԵրուսաղէմ, զորս պատրաստեաց
8 Դաւիթ հայր իմ։ Եւ տուր բերել ինձ
փայտս մայրս եւ սարոյս եւ թեղօշս ի
Լիբանանէ. վասն զի ես գիտեմ, իբրեւ
զծառայս քո ոչ ոք գիտէ հատանել փայտ
ի Լիբանանէ. եւ արդ ծառայք քո եր-
9 թիցեն ընդ ծառայս իմ, Պատրաստել
ինձ փայտ բազում. վասն զի տունս զոր
10 ես շինեմ, է մեծ եւ փառաւոր։ Եւ
գործօնէիցն որք հատանեն զփայտն՝ ի
կերակուր ետու հաց առճիկ ծառայից
քոց, քսան հազար քոռ ցորենոյ, եւ քսան
հազար քոռ գարւոյ, եւ քսան հազար
[4]չափ գինւոյ, եւ ձէթ քսան հազար [4]չափ։
11 Եւ ասաց Քիրամ արքայ Տիւրոսի
գրով, եւ արձակեաց առ Սողոմոն, Վասն
սիրելոյ Տեառն զժողովուրդ իւր՝ ետ
12 զքեզ ի վերայ դոցա թագաւոր։ Եւ ա-
սէ Քիրամ, Օրհնեալ է Տէր Աստուած
Իսրայէլի որ արար զերկինս եւ զերկիր,
որ ետ Դաւթի արքայի որդի իմաստուն՝
գիտել զհանճար եւ զիմաստութիւն, որ
շինեսցէ զտունն Տեառն եւ զտուն թա-

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. խունկս անուշունս [3] Եբր. զնա, ո՞ իցեմ ես զի [4] Եբր. մար

13 գաւորութեան իւրոյ։ Եւ արդ ահա ա-
ռաքեցի քեզ այր իմաստուն, որ գիտէ
14 զհանճար զՔիրամ [5]զծառայ իմ. Մայր
նորա է ի դստերացն Դանայ, եւ հայր
նորա՝ այր Տիւրացի. գիտէ գործել զոս-
կի եւ զարծաթ եւ զպղինձ եւ զերկաթ
եւ զքարինս եւ զփայտս, եւ անկանել
զծիրանին եւ զկապուտակն եւ զբեհեզն
եւ զկարմիրն եւ քանդակել քանդակս,
եւ իմանալ զամենայն հնարս զորս տա-
ցես նմա՝ ընդ իմաստունս քո եւ ընդ
իմաստունս Դաւթի տեառն իմոյ հօր քո։
15 Եւ արդ զցորեանն եւ զգարին եւ զձէթն
եւ զգինին, զոր ասաց տէր իմ, տացէ
16 ծառայից իւրոց. Եւ մեք հատանեմք
փայտ ի Լիբանանէ ըստ ամենայն պի-
տոյից քոց. եւ ածցուք զնոսա ընդ ծով
լաստս ի Յոպպէ, եւ հանցես զայն
յԵրուսաղէմ։
17 Եւ ժողովեաց Սողոմոն զամենայն
արս պանդուխտս [6]յԵրուսաղէմ զկնի
թուոյն զոր թուեաց զնոսա Դաւիթ հայր
նորա, եւ գտան հարիւր յիսուն հազար
18 եւ երեք հազար եւ վեց հարիւր. Եւ
արար ի նոցանէ եւթանասուն հազար
բեռնակրաց եւ ութսուն հազար քարա-
հատաց [7]եւ զերիս հազարսն եւ վեց հա-
րիւրսն՝ գործավարս ի վերայ նոցա։

ԳԼ. Գ

1 Եւ սկսաւ Սողոմոն շինել զտունն Տեառն
յԵրուսաղէմ, [8]ի լերինս Ամովրհացւոցն՛՛,
ուր երեւցաւ Տէր Դաւթի հօր նորա,
ի տեղւոջն յորում պատրաստեաց Դա-
2 ւիթ, ի կալն Ոռնայ Յեբուսացւոյ։ Եւ
սկսաւ շինել յամսեանն [9]երկրորդի, յա-
մին չորրորդի թագաւորութեանն իւրոյ.
3 [10]Եւ սկսաւ Սողոմոն՛՛ շինել զտունն Ա-
ստուծոյ. երկայնութիւն չափոյ առաջնոյն
ի վաթսուն կանգնոյ, եւ լայնութիւն ի
4 քսան կանգնոյ։ Եւ [11]էղամ դէմ յանդի-
ման տանն, երկայնութիւնն առաջին՝
եւ լայնութեան՛՛ տանն կանգնոց քսա-
նից, եւ բարձրութիւն հարիւր եւ քսան
կանգնոյ. եւ պատեաց զնա ոսկւով սրբով
5 ի ներքուստ։ Եւ զտունն մեծ դրուագեաց
մայր փայտիւք, եւ պատեաց ոսկւով

[5] Եբր. զհայր. էմա՛ ճարտարապետ [6] Եբր. յերկրին Իսրայէլի [7] Եբր. ի լերինս եւ [8] Եբր. ի լերինն Մորիա [9] Եբր. երկրորդի յերկրորդում աւուր [10] Եբր. Այս են հիմունքն զոր արկ Սողոմոն [11] Եբր. երկայնութիւն գաւթին որ դէմ յանդիման՝ ըստ լայնութեան

սրբով, եւ քանդակեաց ի նմա արմաւենիս
6 եւ շղթայագործս։ Եւ զարդարեաց զտունն
ականբք պատուականօք ի փառս. եւ
7 [1]ոսկւով սրբով ի Սեփարուիմայ"։ Եւ
պատեաց զտունն ոսկւով, եւ զորմն
եւ զդրունսն եւ զձեղունսն եւ զդուրս,
եւ քանդակեաց քերովբէս յորմն։
8 Եւ արար զտունն սրբութեան սրբու-
թեանցն, զերկայնութիւն նորա [2]առա-
ջոյ կողմանէ" ի քսան կանգնոյ, եւ
զլայնութիւնն ի քսան կանգնոյ, եւ
պատեաց զնա մաքուր ոսկւով [3]ի քե-
9 րովբէս վեց հարեւր տաղանդով։ Եւ
կշիռ բեւեռացն միոյ միոյ կշռութիւն
յիսուն սիկղ ոսկւոյ. եւ զվերնատունն
10 պատեաց ոսկւով։ Եւ արար ի տան
սրբութեան սրբութեանցն քերովբէս
երկուս [4]գործ. եւ պատեաց զնոսա ոսկ-
11 ւով. Եւ թեւք քերովբէիցն՝ երկայնու-
թիւն քսան կանգուն. թեւ մի ի հինգ
կանգնոյ կցեալ յորմս տանն, եւ թեւն
միւս ի հինգ կանգնոյ՝ կցեալ ի թեւ քե-
12 րովբէին միւսոյ. Եւ թեւն քերովբէին
միւսոյ ի հինգ կանգնոյ կցեալ յորմս
տանն, եւ միւս թեւն ի հինգ կանգնոյ
13 կցեալ ի թեւ քերովբէին միւսոյ։ Եւ
թեւք քերովբէիցն տարածեալք ի քսան
կանգնոյ. եւ ինքեանք կային ի վերայ
ոտից իւրեանց, եւ դէմք նոցա ի տունն։
14 Եւ արար զվարագոյրն ի կապուտակէ
եւ ի ծիրանւոյ, ի կարմրոյ եւ ի բեհե-
զոյ, եւ անկանէր ի նմա քերովբէս։
15 Եւ արար առաջի տանն սիւնս երկու
յերեսուն եւ հինգ կանգնոյ բարձրու-
թիւն, եւ զխոյակս նոցա ի հինգ կանգ-
16 նոյ։ Եւ արար վանդակապատ ի դաբի-
րայն, եւ եդ ի վերայ գլխոյ սեանցն. եւ
արար նռնաձեւս հարեւր, եւ եդ ի վերայ
17 շղթայագործացն։ Եւ կանգնեաց [5]զսիւնսն
առաջի տաճարին, զմին յաջմէ եւ զմիւսն
յահեկէ. եւ կոչեաց զանուն այնորիկ որ
յաջմէն էր՝ Ուղղութիւն, եւ զանուն
այնորիկ որ ի ձախմէն էր՝ Զօրութիւն։

Գլ. Դ

1 Եւ արար սեղան պղնձի՝ ի քսան կանգ-
նոյ զերկայնութիւն, եւ ի քսան կանգ-
նոյ զլայնութիւն, եւ զբարձրութիւն ի
տասն կանգնոյ։

[1] Այլ. ոսկին՝ ոսկի Փարուիմայ [2] Այլ. ըստ լայնութեան տանն [3] Յայլ. պակասէ [4] Այլ. գործ քանդակագործ [5] Տես. Գ. Թագ. Է. 21։

2 Եւ արար զծովն ձուլածոյ ի տասն կանգ-
նոյ [6]զչափն, բոլորակ շուրջանակի, եւ
ի հինգ կանգնոյ զբարձրութիւն, եւ
3 շուրջանակի յերեսուն կանգնոյ։ Եւ
նմանութիւն եզանց ի ներքոյ նորա,
որք շուրջ կային, ի տասն կանգնոյ
շուրջ պատեալք զնովաւ. եւ ձուլեցին
[7]զզուարակսն ըստ ձուլածոյն իւրեանց,
4 Որպէս արարին զնոսա երկոտասան
զուարակս". երեքն հայէին ի հիւսիս,
եւ երեքն հայէին յարեւմուտս, եւ ե-
րեքն հայէին ի հարաւ, եւ երեքն հա-
յէին յարեւելս. եւ ծովն ի վերայ նո-
5 ցա, եւ յետոյքն իւրեանց ի ներքոյ։ Եւ
թանձրութիւն ծովուն [8]թզաւ եւ շուրթն
նորա իբրեւ զշուրթն բաժակի, քան-
դակեալ բոյս շուշանի, եւ տանէր երիս
հազարս [9]չափ. [3]եւ կատարեաց զնա"
6 Եւ արար աւազանս տասն, եւ եդ
զհինգն յաջմէ, եւ զհինգն ի ձախմէ.
լուանալ ի նոսա զգործ ողջակիզացն եւ
ողողել ի նոսա. եւ ծովն առ ի լուա-
նալ ի նմա քահանայիցն զինքեանս։
7 Եւ արար զաշտանակսն ոսկիս տասն
ըստ յօրինուածոյն իւրեանց, եւ եդ
զնոսա ի տաճարին, զհինգն յաջմէ եւ
զհինգն ի ձախմէ։
8 Եւ արար սեղանս տասն, եւ եդ ի
տաճարին, հինգ յաջմէ եւ հինգ ի ձախ-
մէ. եւ արար տաշտս ոսկիս հարեւր։
9 Եւ արար [10]զսրահն քահանայիցն եւ
[10]զսրահն զմեծ, եւ զդրունս սրահին.
10 եւ զդրունս նոցա պատեաց պղնձով։ Եւ
զծովն եդ [11]յանկեան տաճարին յաջմէ
11 կողմանէ իբրեւ յարեւելս առաջի"։ Եւ
արար Քիրամ [12]զմահանանն եւ զկաթսայս
եւ զկասկարայս սեղանոյն, եւ զամենայն
զկահն նորա"։ Եւ կատարեաց Քիրամ առ-
նել զամենայն գործն զոր հրամայեաց ար-
12 քայ Սողոմոն ի տանն Աստուծոյ։ Զսիւնսն
երկուս. եւ [13]ի վերայ նոցա զխոյակսն,

[6] Այլ. ի շրթանէ ի շուրթն [7] Այլ. զզուարակսն երկուս կարգս ի ձուլել նորա, (4) Կայր ի վերայ երկոտասան զուարակաց [8] Այլ. ուղկաւ [9] Այլ. մարս [10] Այլ. զգաւիթն [11] Այլ. յաջմէ կողմանէ յարեւելս հարաւոյ [12] Այլ. զկաթսայս եւ զթիակսն եւ զկոնքս [13] Այլ. զդունգսն, և զխոյակսն որ ի վերայ գլխոյ երկուց սեանցն, եւ զվանդակագործսն զերկուս առ ի ծածկել զերկոսին գունդս խոյակացն որ ի վերայ գլխոց սեանցն։ (13) Եւ զնռնաձեւս չորեքհարեւր վասն երկուց վանդակագործացն, երկուս կարգս նռնաձեւաց առ ի ծածկել զերկոսին գունդս խոյակացն որ ի վերայ գլխոց սեանցն

եւ ի վերայ խոյակաց սեանցն զբոլթա-
բոլթն զերկոսեան եւ զվանդակագործն
զերկուս՝ առ ի ծածկել զխոյակս քով-
թարոլթայցն, որք էին ի վերայ գլխոց
13 սեանցն։ Եւ զանգակս ոսկեղէնս չո-
րեքհարիւր յերկոսեան վանդակապատսն,
եւ զերկուս ազգս նռնաձեւացն ի միում
վանդակագործին՝ ծածկել զերկոսեան
14 խոյակսն որ էին ի վերայ սեանցն։ Եւ
զմեքենոյթսն [1]արար տասն՝ եւ զա-
15 ւազանսն ի վերայ մեքենոյթայցն. Եւ
զծովն զմի, եւ զուարակս երկոտասան
16 ի ներքոյ նորա. Եւ [2]զկաթսայս եւ
զբաւանայսն եւ զամանն՝ եւ զմսահանսն,
եւ զամենայն կահ նոցա զոր արար
Քիրամ, [3]եւ տարաւ՝ արքայի Սողոմո-
նի [4]ի տունն Տեառն ի մաքուր պղնձոյ։
17 Ընդարձակութեան երկրին Յորդանա-
նու ձուլեաց [5]զայն արքայ, ի թանձրու-
թեան հողոյն [6]ի տանն Սոքովթայ. եւ
18 ի մէջ Սարեթայ։ Եւ արար Սողոմոն
զամենայն սպասն զայն բազում յոյժ.
վասն զի ոչ [7]պակասեաց կշիռ պղնձոյն։
19 Եւ արար Սողոմոն զամենայն սպաս
տանն [8]Տեառն. եւ զսեղանն ոսկի եւ
զայլ սեղանսն, եւ ի վերայ նոցա զհացն
20 առաջաւորութեան, Եւ զաշտանակսն
եւ զճրագունսն լուսոյ ըստ յօրինուա-
ծոյն յանդիման դաբիրայն ի մաքուր
21 ոսկւոյ, Եւ [9]ճրագարանք իւրեանց՝.
22 Եւ բազմակալք իւրեանց եւ տաշտքն եւ
խնկամանքն եւ բուրուառքն ի մաքուր
ոսկւոյ. եւ [10]դուրք տանն՝ ներքնոյ ի
սրբութիւն սրբութեանցն, եւ [11]զդրունս
տաճարին ոսկեղէնս՝։

## Գլ. Ե

1 Եւ կատարեցաւ ամենայն գործն զոր
արար Սողոմոն [4]ի տանն Տեառն, եւ
տարաւ ի ներքս Սողոմոն զսրբութիւնս
Դաւթի հօր իւրոյ. եւ զարծաթն եւ
զոսկին եւ զսպասն ետ ի գանձս տանն
[8]Տեառն։
2 Յայնժամ եկեղեցացոյց Սողոմոն
զծերսն Իսրայէլի եւ զամենայն իշխանս
ցեղիցն, զառաջնորդս տոհմից որդւոցն
Իսրայէլի յԵրուսաղէմ, հանել զտապա-
նակ ուխտին Տեառն ի քաղաքէն Դաւթի
3 Նա է Սիոն։ Եւ ժողովեցաւ առ արքայ
ամենայն այր Իսրայէլի ի տօնին, այն
4 է ամսեան եւթներորդ։ Եւ եկին ամե-
նեքեան ծերքն Իսրայէլի. եւ առին [12]ա-
մենեքեան Ղեւտացիքն զտապանակն,
5 Եւ հանին զնա, եւ զխորանն վկայու-
թեան եւ զամենայն սպասն սուրբ որ
էր ի խորանին, հանին զայն քահանայքն
6 եւ Ղեւտացիքն։ Եւ արքայ Սողոմոն
եւ ամենայն ժողովուրդն Իսրայէլի [13]եւ
երկիւղածքն եւ ժողովեալքն նոցա՝ ա-
ռաջի տապանակին զենուին զուարակս
եւ ոչխարս որոց ոչ գոյր թիւ եւ ոչ
7 համար ի բազմութենէն։ Եւ տարան ի
ներքս [14]Ղեւտացիքն զտապանակ ուխ-
տին Տեառն ի տեղին իւր՝ ի դաբիր
տանն ի սրբութիւն սրբութեանցն, ի
8 ներքոյ թեւոց քերովբէիցն։ Եւ էր քե-
րովբէիցն թառուցեալ զթեւս իւրեանց ի
վերայ տապանակին, եւ ծածկէին քե-
րովբէքն զտապանակն եւ զբառնալիսն նո-
9 րա ի վերուստ Եւ [15]չուրջ ունէին բառ-
նալիքն՝, եւ հայէին գլուխք բառնա-
լեացն ի սրբութեանցն ի դէմս դաբիրայն,
եւ ոչ երեւէին արտաքս. եւ էին անդ
10 մինչեւ ցայսօր։ Եւ ոչ ինչ էր ի տա-
պանակին՝ բայց երկու տախտակքն զորս
եդ անդ Մովսէս ի Քորեբ, զորս ուխտ-
եաց Տէր ընդ որդիսն Իսրայէլի յելա-
նելն նոցա յերկրէն Եգիպտոսի։
11 Եւ եղեւ իբրեւ ելին քահանայքն ի
սրբութեանցն, (վասն զի ամենեքեան
քահանայքն որք գտան անդ՝ սրբեցան,
եւ ոչ էին կարգեալ օր ըստ օրէ պաշ-
12 տօնեայքն, Եւ Ղեւտացիքն սաղմոսա-
նուագք, ամենեքեան յորդւոցն Ասա-
փայ եւ Եմանայ եւ Իդիթունայ, եւ
յորդւոցն նոցա եւ յեղբարցն նոցա, որք
զգեցեալ էին զպատմուճանս բեհեզե-
ղէնս, եւ տաւղօք եւ քնարօք եւ սրն-
գօք կային յարեւելից կողմանէ սեղա-
նոյն, եւ ընդ նոսա քահանայք հարիւր
13 եւ քսան՝ հարկանէին փողս.) Եւ եղեւ
միանգամայն ձայն ի հարկանել զփողսն
եւ յերգել զսաղմոսն եւ ամբառնալ
զձայնսն միաբան ասելով, Խոստովան
եղերուք եւ օրհնեցէք զՏէր. եւ բարձ-
րացուցին զձայնսն փողովքն եւ ծնծղայ-

[1] Եբր. արար [2] Եբր. զկաթսայս եւ զԹիակն. [3] Եբր. ճարտարապետ [4] Եբր. վասն տանն [5] Եբր. զնոսա [6] Եբր. ի մէջ [7] Եբր. խնդրէր [8] Եբր. Աստուծոյ [9] Եբր. զծաղիկսն եւ զճրագարանսն եւ զունելիսն ի մաքուր ոսկւոյ [10] Եբր. զդուրս տանն, զփեղկս դրանն [11] Եբր. զփեղկս տանն, տաճարին, ոսկեղէնս

[12] Յեբր. [illegible] [13] Եբր. ժողովեալք առ նմա [14] Եբր. քահանայքն [15] Եբր. ագուցին զբառնալիսն

իւք եւ գործեօք երգոյն, եւ ասացին
Խոստովան եղերուք Տեառն. զի բարի
է, զի յաւիտեան է ողորմ նորա. եւ
տաճարն լցաւ ամպով [1]փառացն Տեառն.
14 Եւ ոչ կարէին քահանայքն կալ ի պաշ-
տաման յերեսաց ամպոյն, վասն զի
լցին փառքն Տեառն զտունն Աստուծոյ։

Գլ. Զ

1 Յայնժամ խօսեցաւ Սողոմոն, Տէր ա-
2 սաց բնակել ի մառախուղ։ Եւ ես շի-
նեցի տուն [2]անուան քում զսրբութիւնս
քո, եւ պատրաստեցի բնակել ի սմա՝
3 յաւիտեանս։ Եւ դարձոյց արքայ զերեսս
իւր, օրհնեաց զամենայն եկեղեցին Իս-
րայելի, եւ ամենայն եկեղեցին Իսրա-
4 յելի կայր շուրջ, Եւ ասէ, Օրհնեալ է
Տէր Աստուած Իսրայելի, որ խօսեցաւ
բերանով իւրով ընդ Դաւթի հօր իմում,
5 եւ ձեռօք իւրովք ելից. Եւ ասէ, Յօրէ
յորմէ հանի զժողովուրդ իմ յերկրէն Ե-
գիպտոսի՝ ոչ ընտրեցի քաղաք մի յա-
մենայն ցեղիցն Իսրայելի շինել ինձ
տուն, զի լինիցի անուն իմ անդ. եւ ոչ
ընտրեցի զայր ոք լինել առաջնորդ ի
6 վերայ ժողովրդեան իմոյ Իսրայելի։ Եւ
արդ ընտրեցի զԵրուսաղէմ լինել ան-
ուան իմոյ անդ. եւ ընտրեցի զԴաւիթ
զի լինիցի ի վերայ ժողովրդեան իմոյ
7 Իսրայելի։ Եւ եղեւ ի սրտի Դաւթի հօր
իմոյ շինել տուն անուան Տեառն Աս-
8 տուծոյ Իսրայելի. Եւ ասաց Տէր ցԴա-
ւիթ ցհայր իմ, Վասն զի եղեւ ի սրտի
քում շինել տուն անուան իմոյ՝ բարւոք
արարեր զի եղեւ այդ ի սրտի քում.
9 Բայց սակայն դու ոչ շինեսցես ինձ
տուն, այլ որդի քո որ ելցէ յորովայնէ
քումմէ. նա շինեսցէ տուն անուան ի-
10 մոյ։ Եւ կանգնեաց Տէր զբան իւր զոր
խօսեցաւ, եւ եղէ ես փոխանակ Դաւթի
հօր իմոյ. նստայ յաթոռն Իսրայելի որ-
պէս խօսեցաւ Տէր, եւ շինեցի զտունս
զայս անուան Տեառն Աստուծոյ Իսրա-
11 յելի։ Եւ եդի անդ զտապանակ ուխ-
տին զոր ուխտեաց ընդ որդիսն Իսրայելի։
12 Եւ եկաց յանդիման սեղանոյն Տեառն
առաջի ամենայն եկեղեցւոյն Իսրայելի,
13 եւ ամբարձ զձեռս իւր։ (Վասն զի ա-
րար Սողոմոն [3]խարիսխ պղնձի եւ եդ
զնա ի մէջ [4]սրահի տաճարին՝, ի հինգ
կանգնոյ զերկայնութիւն նորա, եւ ի
հինգ կանգնոյ զլայնութիւնն, եւ յերից
կանգնոց զբարձրութիւն նորա. եւ եկաց
ի վերայ նորա, անկաւ ի վերայ ծնգաց
իւրոց առաջի ամենայն եկեղեցւոյն Իս-
րայելի, եւ ամբարձ զձեռս իւր յերկինս։)
14 Եւ ասէ, Տէր Աստուած Իսրայելի,
ոչ ոք է նման քեզ Աստուած յերկինս
եւ ոչ ի վերայ երկրի, որ պահես զուխտ
եւ զողորմութիւն [5]ամենեցուն որ գնան
առաջի քո ամենայն սրտիւք իւրեանց։
15 Զի պահեցեր ծառայի քում Դաւթի հօր
իմոյ զոր խօսեցար ընդ նմա եւ [6]ասացեր,
խօսեցար բերանով քով եւ ձեռօք քովք
16 լցեր այսօր։ Եւ արդ, Տէր Աստուած
Իսրայելի, պահեա ծառայի քում Դաւթի
հօր իմում զոր ինչ խօսեցար ընդ նմա
եւ ասացեր, Ոչ պակասեսցէ քո այր
յերեսաց իմոց որ նստիցի յաթոռն Իս-
րայելի. բայց միայն թէ պահեսցեն որ-
դիք քո զճանապարհս իւրեանց գնալ
[7]առաջի իմ, որպէս գնացեր դու առաջի
17 իմ։ Եւ արդ, Տէր Աստուած Իսրայելի,
հաւատարիմ լիցի բանն քո [8]Դաւթի։
18 Եթէ սակայն թէ բնակեսցէ՞ Աս-
տուած ընդ մարդկան ի վերայ երկրի.
զի եթէ երկինք եւ երկնից երկինք ոչ
են բաւական քեզ, եւ զի՞նչ է տունս
19 այս զոր շինեցի։ Եւ արդ հայեսցիս յա-
ղօթս ծառայի քո եւ ի խնդրուածս [9]իմ,
Տէր Աստուած՝, լսել զաղաչանս եւ զա-
ղօթս զոր ծառայ քո աղաչէ առաջի քո
20 այսօր, Լինել բաց աչաց քոց [6]եւ մտաց՝
ի տունս յայսմ ի տուէ եւ ի գիշերի, ի
տեղւոջս յորում ասացեր կոչել զանուն
քո ի սմա, առ ի լսել զաղօթս զոր ծա-
21 ռայ քո աղաչէ ի տեղւոջս յայսմ։ Եւ
լուիցես զխնդրուածս ծառայի քո եւ
ժողովրդեան քո Իսրայելի, զոր ինչ ա-
ղաչեսցեն ի տեղւոջս յայսմ. եւ դու
լուիցես ի տեղւոջէ բնակութեան քո
յերկնից, լուիցես՝ եւ քաւիչ լիցիս։
22 Զոր ինչ մեղանչիցէ այր ընկերի իւ-
րում, եւ [10]առնուցու նզովս յաղագս այ-
նորիկ նզովել զնա, եւ եկեսցէ կացցէ
23 առաջի սեղանոյս՝ ի տանս յայսմիկ, Եւ
դու լուիցես յերկնից, եւ արասցես եւ

[1] Եբր. տունն [2] Եբր. բնակութեան քեզ և տեղի հաստելոյ [3] կամ, բեմ [4] Եբր. գաւթին

[5] Եբր. ծառայից քոց [6] Յեբր. պակաս [7] Եբր. յօրէնս [8] Եբր. զոր խօսեցար ծառայի քում Դաւթի [9] Եբր. նորա. Տէր Աստուած իմ [10] Եբր. եթէ որկցի նմա երդումն առ երդնուլ, և եկեսցէ երդումն առաջի սեղանոյ քո

գատեսցես զծառայս քո՝ հատուցանե-
լով անօրինին, տալ ըստ ճանապարհաց
նորա ի գլուխ նորա, եւ արդարացու-
ցանել զարդարն [1]եւ տալ իւրաքանչիւր
ումեք՝՝ ըստ արդարութեան իւրում։
24 Եւ եթէ վանեսցի ժողովուրդ քո Իս-
րայէլ առաջի թշնամեաց, եթէ մեղիցեն
քեզ եւ դարձցին եւ խոստովան լիցին
անուան քում, եւ յաղօթս կացցեն եւ
աղաչեսցին առաջի քո ի տանս յայսմ,
25 Եւ դու լուիցես յերկնից, եւ քաւիչ լի-
ցիս մեղաց ժողովրդեան քո Իսրայելի.
եւ դարձուսցես զնոսա յերկիրն զոր
ետուր նոցա եւ հարց նոցա։
26 Յարգելուլ քո զերկինս ոչ լինել անձ-
րեւ՝ թէ մեղիցեն քեզ, եւ յաղօթս կաց-
ցեն ի տեղւոջս յայսմ, եւ օրհնեսցեն
զանուն քո, եւ ի մեղացն իւրեանց
դարձցին, վասն զի նկուն արասցես
27 զնոսա, Եւ դու լուիցես յերկնից, եւ
քաւիչ լիցիս մեղաց ծառայից քոց եւ
ժողովրդեան քո Իսրայելի. վասն զի
յայտնեսցես նոցա զճանապարհն բարի
յոր գնասցեն ի նմա. եւ տացես անձ-
րեւ ի վերայ երկրի քո զոր ետուր ժո-
ղովրդեան քում ի ժառանգութիւն։
28 Սով եթէ լինիցի ի վերայ երկրի, մահ
եթէ լինիցի, խորշակահարութիւն եւ
դալուկն եւ մարախ եւ ջորեակ եթէ
լինիցի, եթէ նեղիցէ զնոսա թշնամի
յանդիման քաղաքացն իւրեանց, ըստ
ամենայն հարուածոց եւ ըստ ամենայն
29 ցաւոց, Ամենայն աղօթք եւ ամենայն
պաղատանք որ լինիցին ամենայն մար-
դոյ եւ ամենայն ժողովրդեան քո Իս-
րայելի, եթէ ծանիցէ մարդ [2]զխորատու-
թիւն իւր եւ զախտ իւր՝՝, եւ ամբարձ-
30 ցէ զձեռս իւր ի տունս յայս, Եւ դու
լուիցես յերկնից ի պատրաստ բնակու-
թենէ քումմէ, եւ բժշկեսցես, եւ տա-
ցես առն ըստ սրտի իւրում՝ որպէս եւ
ծանիցես զսիրտ նորա. վասն զի դու
միայն ճանաչես զսիրտ որդւոց մարդ-
31 կան. Որպէս զի [3]երկիցեն ի ճանապար-
հաց քոց՝՝ զամենայն աւուրս զորս կեց-
ցեն նոքա ի վերայ երեսաց երկրին զոր
ետուր հարցն [4]նոցա։
32 Եւ ամենայն օտարական որ ոչ իցէ ի
ժողովրդենէ քումմէ յԻսրայելէ ինքն,
եւ եկեսցէ յերկրէ հեռաստանէ՝ վասն
անուան քո մեծի եւ հզօր ձեռին քո եւ
բարձր բազկի քո, եկեսցեն եւ յաղօթս
33 կացցեն ի տեղւոջս յայսմ, Եւ լուիցես
յերկնից ի պատրաստ բնակութենէ քում-
մէ, եւ արասցես ըստ ամենայնի զոր
ինչ եւ կարդասցէ առ քեզ օտարականն.
զի ծանիցեն ամենայն ժողովուրդք երկ-
րի զանուն քո, եւ երկիցեն ի քէն որ-
պէս եւ ժողովուրդ քո Իսրայէլ, եւ
գիտասցեն եթէ կոչեցեալ է անուն քո
ի վերայ տանս այսորիկ զոր շինեցի։
34 Եթէ ելցէ ժողովուրդ քո ի պատե-
րազմ ի վերայ թշնամեաց իւրոց ի ճա-
նապարհ՝ յոր առաքեսցես զնոսա, եւ
յաղօթս կացցեն առ քեզ ի ճանապար-
հի քաղաքիս այսորիկ զոր ընտրեցեր
դու, եւ տանս զոր շինեցի անուան
35 քում, Եւ լուիցես յերկնից պաղատա-
նաց նոցա եւ աղօթից նոցա, եւ ա-
36 րասցես իրաւունս նոցա։ Վասն զի մե-
ղանչեն քեզ, քանզի ոչ գոյ մարդ որ
ոչ մեղանչէ, եւ հարցես զնոսա եւ մատ-
նեսցես զնոսա առաջի երեսաց թշնա-
մեաց, եւ գերելով [5]գերեսցեն յերկիր
թշնամեացն,՝՝ յերկիր հեռաւոր կամ մօ-
37 տաւոր, Եւ դարձցին սրտիւք իւրեանց
յերկրին յոր փոխեցան անդր, դարձցին
եւ աղաչեսցեն զքեզ ի գերութեանն
իւրեանց, եւ ասասցեն, Մեղաք եւ
38 [6]անօրինեցաք, Եւ դարձցին առ քեզ յա-
մենայն սրտից իւրեանց եւ ի բոլոր անձ-
նէ իւրեանց յերկրի գերութեանն[7], եւ
յաղօթս կացցեն ի ճանապարհ երկրիս
այսորիկ զոր ետուր հարցն նոցա եւ
քաղաքիս զոր ընտրեցեր եւ տանս զոր
39 շինեցի անուան քում, Եւ լուիցես յերկ-
նից ի պատրաստ բնակութենէ քումմէ,
աղօթից նոցա եւ պաղատանաց իւրեանց,
եւ արասցես իրաւունս, եւ քաւիչ լի-
40 ցիս ժողովրդեանն մեղուցելոյ քեզ։ Եւ
արդ, [8]Տէր, եղիցին աչք քո բաց, եւ
ականջք քո առ ի լսել զպաղատանս ի
41 տեղւոջս յայսմ։ Եւ արդ արի, Տէր Աս-
տուած, ի հանգիստ քո, դու եւ տա-
պանակ [9]սրբութեան քո. քահանայք
քո, Տէր Աստուած, զգեցցին զփրկու-
թիւն, եւ [10]որդիք քո ուրախ եղիցին ի

[1]Այլ· տալ նմա [2]Այլ· զախտ իւր եւ զցաւ իւր [3]Այլ· երկիցեն ի քէն գնալ ի ճանապարհս քո [4]Եբր· մերոց

[5]Այլ· տարցին զնոսա գերիս որ գերեն զնոսա [6]Այլ· անօրինեցաք եւ անիրաւեցաք [7]Եբր· [illegible] ուր վարեցին զնոսա գերիս [8]Այլ· Աստուած իմ [9]Եբր· զօրութեան [10]Այլ· սուրբք

42 բարութիւնս։ Տէր Աստուած, մի դար-
ձուցանիր զերեսս քո յօծելոյ քումմէ,
յիշեա ողորմութեամբ քո զԴաւիթ ծա-
ռայ քո։

ԳԼ. Է

1 Եւ իբրեւ կատարեաց Սողոմոն զա-
ղօթսն, հուր էջ յերկնից եւ եկեր զող-
ջակէզսն եւ զզոհսն. եւ փառքն Տեառն
2 լցին զտունն։ Եւ ոչ եւս կարէին քա-
հանայքն մտանել ի տուն Տեառն [1]ի ժա-
մանակին յայնմիկ", վասն զի լցին փառքն
3 Տեառն զտունն։ Եւ ամենայն որդիքն
Իսրայէլի տեսանէին զիջանել հրոյն եւ
զփառսն Տեառն ի վերայ տանն. եւ ան-
կան ի վերայ երեսաց յերկիր ի քարա-
յատակ տեղւոջն, եւ երկիր պագին եւ
օրհնեցին զՏէր, զի բարի է, զի յաւի-
4 տեան է ողորմութիւն նորա։ Եւ ար-
քայ եւ ամենայն ժողովուրդն զենուին
5 զոհս առաջի Տեառն։ Եւ եզեն Սողո-
մոն զզոհսն, զուարակս քսան եւ եր-
կու հազարս, եւ ոչխարս [1]արօտականս
հարիւր քսան հազարս. եւ արար զնա-
ւակատիս տաճարին Աստուծոյ արքայ
6 եւ ամենայն ժողովուրդն։ Եւ քահա-
նայքն ըստ պահպանութեանն իւրեանց
կային, եւ Ղեւտացիքն նուագարանօք
երգոյն Տեառն [2]եւ Դաւթայ արքայի,
խոստովան լինել առաջի Տեառն՝ զի յա-
ւիտեան է ողորմութիւն նորա. օրհնու-
թեամբքն Դաւթայ ի ձեռն նոցա. եւ քա-
հանայքն հարկանէին փողս առաջի նո-
ցա. եւ ամենայն Իսրայէլ յոտն կայր։
7 Եւ սրբեաց Սողոմոն զմիջոց [3]սրահին
որ էր ի տանն" Տեառն, վասն զի անդ
արար զողջակէզսն եւ զճարպն [4]փրկու-
թեան. քանզի սեղանն պղնձի զոր ա-
րար Սողոմոն՝ ոչ կարէր ընդունել զող-
ջակէզսն եւ [5]զմանանայն եւ զճարպսն։
8 Եւ արար Սողոմոն զտօնն ի ժամանա-
կին յայնմ աւուրս եւթն, եւ ամենայն
Իսրայէլ ընդ նմա, եկեղեցի մեծ յոյժ,
ի մտիցն Եմաթայ մինչեւ ի հեղեղատն
9 Եգիպտոսի։ Եւ [6]արար յաւուրն ութե-
րորդի [7]ելս. վասն զի զնաւակատիսն
[6]արար սեղանոյն զեւթն [8]օր տօնին"։

[1] Եբր. պակաս [2] Եբր. զոր արարեալ էր [3] Եբր. գաւթին որ էր առաջի տանն [4] Եբր. խաղաղութեան [5] Եբր. զընծայսն հացի [6] Եբր. արարին [7] Եբր. տօն, կամ, ժողով մեծ [8] Եբր. օր, եւ զտօնն զեւթն օր

10 Եւ ի քսան եւ երիս ամսոյն եւթներորդի
արձակեաց զժողովուրդն ի խորանս իւ-
րեանց ուրախութեամբ եւ բարի սրտիւ,
յամենայն բարութիւնսն զոր արար Տէր
Դաւթի եւ Սողոմոնի եւ ժողովրդեան
իւրում Իսրայէլի։
11 Եւ կատարեաց Սողոմոն զտունն Տեառն
եւ զտունն արքայի. եւ զամենայն ինչ զոր
կամեցաւ անձն Սողոմոնի առնել ի տանն
Տեառն եւ ի տանն իւրում՝ յաջողեցաւ։
12 Եւ երեւեցաւ [9]Աստուած Սողոմոնի ի
գիշերին յայնմ", եւ ասէ ցնա, Լուայ
աղօթից քոց, ընտրեցի զտեղիդ զայդ
13 ինձ ի տուն զոհից։ Եթէ արգելից զեր-
կինս եւ ոչ լինիցի անձրեւ, եւ եթէ
պատուիրեցից մարախոյ ուտել [10]զփայտ,
եւ եթէ առաքեցից մահ ի ժողովուրդ
14 իմ, Եւ եթէ [11]ամաչեսցէ ժողովուրդ իմ
յորոց կոչեցեալ է անուն իմ ի վերայ
նոցա, եւ յաղօթս կացցեն եւ խնդրես-
ցեն զերեսս իմ, եւ դարձցին ի ճանա-
պարհաց իւրեանց չարաց, եւ ես լուայց
յերկնից եւ քաւիչ եղէց նոցա եւ բժշկե-
15 ցից զերկիր նոցա։ Եւ այժմ աչք իմ ե-
ղիցին բաց, եւ ականջք իմ առ ի լսել
16 զաղօթս ի տեղւոջս յայսմ։ Եւ արդ ահա
ընտրեցի զտունս զայս, եւ սրբեցի զսա
առ ի լինել անուան իմոյ աստ յաւի-
տեան, եւ եղիցին աչք իմ եւ սիրտ աստ
17 զամենայն աւուրս։ Եւ դու եթէ գնասցես
առաջի իմ իբրեւ զԴաւիթ հայր քո, եւ
արասցես ըստ ամենայնի զոր ինչ պա-
տուիրեցի քեզ, զհրամանս իմ եւ զի-
18 րաւունս իմ պահեսցես, Կանգնեցից
զաթոռ թագաւորութեան քո, որպէս
ուխտեցի ընդ Դաւթի հօր քո եւ ա-
սացի, Ոչ բարձցի քո այր առաջնորդ
19 յԻսրայէլէ։ Ապա թէ դարձջիք դուք եւ
թողջիք զհրամանս իմ եւ զպատուի-
րանս իմ զորս ետու առաջի ձեր, եւ
երթայցէք պաշտիցէք զաստուածս օ-
տարս եւ երկիր պագանիցէք նոցա,
20 Բարձից զձեզ յերկրէս զոր ետու ձեզ,
եւ զտունս զայս զոր սրբեցի անուան
իմոյ՝ ի բաց դարձուցից յերեսաց իմոց,
եւ տաց զսա յառակ եւ ի պատմութիւն
21 յամենայն ազգս, Զտունս զայս զբարձր.
եւ ամենայն որ անցանիցէ առ սովաւ՝
զարմասցի եւ ասասցէ, Ընդէ՞ր արար
[12]Տէր երկրիս այսմ եւ տանս այսմիկ։

[9] Եբր. Տէր Սողոմոնի ի գիշերի [10] Եբր. զերկիր
[11] Եբր. խոնարհեսցի [12] Եբր. Տէր այսպէս

22 Եւ ասասցեն, վասն զի թողին զՏէր
Աստուած հարցն իւրեանց՝ որ եհան զնո-
սա յերկրէն Եգիպտոսի, եւ ընկալան
զաստուածս օտարս, երկիր պագին նո-
ցա եւ ծառայեցին նոցա, յաղագս այ-
նորիկ ած ի վերայ նոցա զամենայն չա-
րիսդ զայդոսիկ։

Գլ. Ը

1 Եւ եղեւ յետ քսան ամաց յորս շինեաց
Սողոմոն զտունն Տեառն եւ զտունն իւր,
2 Եւ զքաղաքսն զոր ետ Քիրամ Սողո-
մոնի, շինեաց զնոսա Սողոմոն, եւ բնա-
3 կեցոյց անդ զորդիսն Իսրայէլի։ Եւ եկն
Սողոմոն յԵմաթ Սովբայ, եւ [1]զօրացոյց
4 զնա. Եւ շինեաց զԹադմոր յանապա-
տին, եւ զամենայն քաղաքսն [2]ամուրս
5 շինեաց յԵմաթ. Եւ շինեաց զԲեթորոն
վերին եւ զԲեթորոն ներքին, քաղաքս
ամուրս պարսպօք եւ դրամբք եւ նիգօք.
6 Եւ զԲաղաաթ, եւ զամենայն քաղաքսն
[2]ամուրս որք էին Սողոմոնի, եւ զա-
մենայն քաղաքս կառացն եւ զամենայն
քաղաքս ձիոց. եւ զոր ինչ ցանկացաւ
Սողոմոն ըստ ցանկութեան իւրում շի-
նել յԵրուսաղէմ եւ ի Լիբանան եւ յա-
մենայն թագաւորութեան իւրում։
7 Ամենայն ժողովուրդ որ մնացեալ էր
ի Քետացւոցն եւ յԱմովրհացւոցն եւ ի
Փերեզացւոցն եւ ի Խեւացւոցն եւ ի Յե-
բուսացւոցն, որք ոչ էին յորդւոցն Իս-
8 րայէլի, Այլ էին յորդւոց այնոցիկ որք
մնացեալ էին [3]ընդ նոսա՝ յերկրին զորս
ոչ սատակեցին որդիքն Իսրայէլի, եւ
ած զնոսա Սողոմոն ի հարկատուս մին-
9 չեւ ցայսօր։ Եւ յորդւոցն Իսրայէլի ոչ
ա՛ռ Սողոմոն ի ծառայս թագաւորու-
թեան իւրոյ. վասն զի նոքա էին արք
պատերազմողք եւ իշխանք զօրաւորք եւ
10 իշխանք կառաց եւ երիվարաց, Եւ սո-
քա էին իշխանք հրամանաց թագաւո-
րութեանն Սողոմոնի, երկերիւր եւ յի-
սուն գործավարք ժողովրդեանն։
11 Եւ զդուստրն Փարաւոնի եհան Սո-
ղոմոն ի քաղաքէն Դաւթի ի տունն զոր
շինեաց նմա. վասն զի ասաց, Ոչ բնա-
կեսցէ կին իմ [4]ի քաղաքին Իսրայէլի
արքայի Դաւթի՝, վասն զի սուրբ է,
ուր եմուտ անդր տապանակն Տեառն։
12 Յայնժամ եհան Սողոմոն ողջակէզս
Տեառն ի վերայ սեղանոյն [5]նորա զոր շի-
13 նեաց յանդիման [6]տաճարին, Եւ ըստ բա-
նին աւուրց յաւուրս մատուցանել ըստ
պատուիրանացն Մովսիսի ի շաբաթս եւ
յամսամուտս եւ ի տօնս. երիս ժամա-
նակս ի տարւոջ, ի տօնի բաղարջակե-
րացն, եւ ի տօնի եւթներորդացն, եւ ի
14 տօնի տաղաւարահարացն։ Եւ կացոյց ըստ
իրաւանցն Դաւթի զդասս քահանայիցն
ըստ պաշտաման նոցա. եւ զՂեւտացիսն
ի վերայ պահպանութեանն իւրեանց,
օրհնել եւ պաշտել առաջի քահանայիցն
ըստ օրինին օր ըստ օրէ. եւ զդռնապանս
ըստ որոշմանն իւրեանց ի դրունս դրունս.
վասն զի այսպէս էր պատուիրանն Դաւ-
15 թայ առնն Աստուծոյ։ Եւ ոչ անցին
զպատուիրանօքն արքայի յաղագս քա-
հանայից եւ Ղեւտացւոց, յամենայն բա-
16 նի եւ ի գանձարանս։ Եւ պատրաստե-
ցաւ ամենայն գործն յօրէ յորմէ սկսաւ
մինչեւ յօրն յորում կատարեաց Սողո-
մոն զտունն [7]Տեառն։
17 Յայնժամ գնաց Սողոմոն ի Գասիոն-
գաբեր, եւ յԵղաթ՝ որ առ ծովեզերն
18 [8]Հրէաստանի էր։ Եւ առաքեաց [9]Քիրամ
ի ձեռն ծառայից իւրոց նաւս, եւ արս
որ գիտէին նաւել ընդ ծով, եւ գնա-
ցին ընդ ծառայսն Սողոմոնի [10]ի Սովփե-
րա. եւ առին անտի չորեքհարեւր եւ
յիսուն տաղանդ ոսկւոյ, եւ եկին առ
արքայ Սողոմոն։

Գլ. Թ

1 Եւ թագուհին Սաբայ լուաւ զանուն
Սողոմոնի, եւ եկն փորձել զՍողոմոն
առակօք յԵրուսաղէմ, յոյժ ծանր զօրու-
թեամբ, եւ ուղտուք որ բարձեալ բե-
րէին խունկս եւ ոսկի բազում եւ ականս
պատուականս. եւ եկն առ Սողոմոն, եւ
խօսեցաւ ընդ նմա զամենայն որ ինչ էր
2 ի միտս իւր։ Եւ պատմեաց նմա Սողո-
մոն զամենայն բանս նորա, եւ ոչ վրի-
պեաց բան մի ի Սողոմոնէ զոր ոչ պատ-
3 մեաց նմա։ Եւ ետես թագուհին Սա-
բայ զիմաստութիւնն Սողոմոնի. եւ
4 զտունն զոր շինեաց, Եւ զկերակուրս [11]սե-
ղանոյն, եւ զաթոռս՝ ծառայից նորա,
եւ զկարգս պաշտօնէից նորա, եւ զպատ-
մուճանս նոցա, եւ զմատուռակս նո-

[1] Ոմն. նուաճեաց [2] Ոմն. շտեմարանաց [3] Ոմն. յետ նոցա [4] Ոմն. ի տունն Դաւթի արքայի Իսրայէլի

[5] Ոմն. Տեառն [6] Ոմն. սրահին [7] Ոմն. Տեառն, Կատարեցաւ տունն Տեառն [8] Ոմն. յերկրին Եդովմայ [9] Ոմն. առ նա Քիրամ [10] Ոմն. յՈփիր [11] Ոմն. սեղանոյ նորա, եւ զբնակութիւն

րս, եւ զզգեստն նոցա, եւ [1]զողջա-
կէզսն զոր մատուցանէր ի տանն" Տեառն,
ի զարմացման եղեւ, եւ ասէ ցարքայ,
5 Ճշմարիտ էր բանն զոր լուայ յերկրին
իմում յաղագս բանից քոց, եւ վասն ի-
6 մաստութեան քո. Եւ ոչ հաւատացի
բանիցն մինչեւ եկի եւ տեսին աչք իմ.
եւ ահա ոչ է ի կէս զոր պատմեցինն,
ի բազմութենէ իմաստութեանս քո զորս
7 յաւելեր ի համբաւն զոր լուայ։ Երա-
նելիք են արքդ եւ երանելի [2]կանայք
քո, եւ" ծառայքդ այդոքիկ որք կան
առ քեզ հանապազ եւ լսեն զիմաստու-
8 թիւնդ քո։ Եղիցի Տէր Աստուած քո օրհ-
նեալ որ հաճեցաւ ընդ քեզ, [3]տալ զքեզ յա-
թոռ թագաւորութեան իւրոյ՝ ժողովըր-
դեան քում". զի յաղագս սիրելոյ [2]Տեառն
Աստուծոյ քո զԻսրայէլ եւ կացուցա-
նելոյ զնա յաւիտեան՝ եդ զքեզ ի վերայ
դոցա թագաւոր, առնել իրաւունս եւ
9 արդարութիւն։ Եւ ետ արքային հարեւր
եւ քսան տաղանդ ոսկւոյ, եւ խունկս
բազում յոյժ, եւ ականս պատուականս.
եւ ոչ գոյր իբրեւ զխունկսն զայնոսիկ
զորս ետ տիկինն Սաբայ արքային Սո-
ղոմոնի։
10 Եւ ծառայքն Սողոմոնի եւ ծառայքն
Քիրամայ բերին ոսկի Սողոմոնի [4]ի Սով-
փերայ, եւ փայտս նոճս եւ ականս պա-
11 տուականս։ Եւ արար արքայ զփայտն
նոճ՝ աստիճանս տանն Տեառն եւ տանն
արքային, եւ քնարս եւ տաւիղս երգե-
ցողացն. եւ ոչ երբեք երեւեցաւ այն-
պէս յառաջագոյն յերկրին Յուդայ։
12 Եւ արքայ Սողոմոն ետ տիկնոջն Սա-
բայ զամենայն զոր ինչ կամեցաւ նա եւ
զոր ինչ խնդրեաց, բաց յայնցանէ զոր
ետ արքային Սողոմոնի. եւ դարձաւ յեր-
կիրն իւր[5]։
13 Եւ էր կշիռ ոսկւոյն զոր բերին Սո-
ղոմոնի ի միում տարւոջ, վեց հարեւր
եւ վաթսուն եւ վեց տաղանդ ոսկւոյ,
14 Առանց արանցն [6]կարգեցելոց եւ վաճա-
ռականացն որք բերէին. եւ յամենայն
թագաւորութեանցն Արաբացւոց եւ յիշ-
խանաց երկրին բերէին ոսկի եւ արծաթ
արքային Սողոմոնի։
15 Եւ արար արքայ Սողոմոն [7]երեք հա-
րեւր" վահան ոսկի կռածոյ, վեց հարեւր
[8]դահեկան մաքուր ոսկի" ի մի վահան.
16 Եւ երեք հարեւր [9]նիզակ ոսկի կռա-
ծոյ, երեք հարեւր [10]դահեկան ի մի նի-
զակ յիւրաքանչիւր ոք ի նոցանէ. եւ
ետ զայն" արքայ ի տան անտառին Լի-
բանանու։
17 Եւ արար արքայ աթոռ ի ժանեաց
փղաց մեծ, եւ պատեաց զնա մաքուր
18 ոսկւով։ Եւ վեց աստիճանք էին աթո-
ռոյն [11]կապեալք ոսկւով. եւ անկիւնք"
աստի եւ անտի յաթոռն նստելոյ. եւ եր-
կու առեւծք կային առ [12]ոտս անկեանցն"։
19 Եւ երկոտասան առեւծք կային աստի
եւ անտի առ վեց աստիճանսն. եւ ոչ
երբեք եղեւ այնպիսի յամենայն թա-
գաւորութեան ուրուք։
20 Եւ ամենայն սպաս արքային Սողոմո-
նի ոսկեղէն, եւ ամենայն սպաս տան
անտառին Լիբանանու [13]ոսկւով բեւե-
ռեալ". եւ ոչինչ էր համարեալ արծաթ
21 յաւուրս Սողոմոնի։ Վասն զի նաւ ար-
քային Սողոմոնի երթայր ի Թարսիս ընդ
ծառայսն Քիրամայ, եւ միանգամ յերիս
ամս գայր նաւն ի Թարսսայ արքային,
լի ոսկւով եւ արծաթով եւ ժանեօք
փղաց եւ կապիօք եւ սիրամարգօք։
22 Եւ մեծացաւ Սողոմոն քան զամենայն
թագաւորս ընչիւք եւ իմաստութեամբ։
23 Եւ ամենայն թագաւորք երկրի խնդրէին
զերեսս Սողոմոնի տեսանել, եւ լսել
զիմաստութիւն նորա զոր ետ Աստուած
24 ի սիրտ նորա։ Եւ նոքա բերէին իւրա-
քանչիւր ոք ընծայ նմա՝ անօթս արծա-
թեղէնս եւ անօթս ոսկեղէնս եւ պատ-
մուճանս, եւ [14]ստաշխն եւ խունկս եւ ձիս
եւ ջորիս ամի ամի։
25 Եւ էին Սողոմոնի [15]չորք բեւրք մա-
տակ ձիք ի կառս, եւ երկոտասան հա-
զարք երիվարք". եւ ետ զնոսա ի քա-
ղաքս կառացն, եւ էին ընդ Սողոմոնի
26 յԵրուսաղէմ։ Եւ էր իշխան ամենայն
թագաւորացն ի գետոյն Եփրատայ մին-
չեւ յերկիրն [16]այլազգեաց, եւ մինչեւ ի
27 սահմանս Եգիպտոսի։ Եւ եդ արքայ

[1] Եբր. զսանդուղսն որ ելանէր ի տունն [2] Եբր. [illegible] [3] Եբր. դնել զքեզ յաթոռ իւր լինել քեզ թագաւոր վասն Տեառն Աստուծոյ քո [4] Եբր. յՈփիրայ [5] Եբր. [illegible]. նա եւ ծառայք նորա [6] Եբր. թանգարաց

[7] Եբր. երկերիւր [8] Եբր. [illegible] ոսկի կռածոյ [9] Եբր. ասպար [10] Եբր. [illegible] ոսկի ի մի ասպար, եւ եդ զնոսա [11] Եբր. եւ պատուանդան ոսկի՝ կապեալ ընդ աթոռոյն և նեցուկք [12] Եբր. նեցուկսն [13] Եբր. յոսկւոյ [illegible] [14] Եբր. զէնս [15] Եբր. չորեք հազար ասպաստանք ձիոց եւ կառաց, և երկոտասան հազար հեծեալք [16] Եբր. Փղշտացւոց

[1]զամլի եւ՝՝ պարծամթ իւրեւ զքարինս յԵ-
րուսաղէմ, եւ զփայտս մայրս իւրեւ
28 զմոլամթզենիս ի պաշտօն բազում։ Եւ էր
ձիոցն Սողոմոնի յԵգիպտոսէ եւ յամե-
նայն երկրէ։
29 Եւ մնացորդք բանիցն Սողոմոնի ա-
ռաջինք եւ վերջինք ահա գրեալ են ի
բանս Նաթանայ մարգարէի, եւ ի բանս
Աքիայ Սիլովնացւոյ, եւ ի տեսիլն [2]Յովելայ
տեսանողի վասն Յերոբովամայ որդւոյ
30 Նաբատայ։ Եւ թագաւորեաց [3]արքայ Սո-
ղոմոն՝՝ ի վերայ ամենայն Իսրայէլի ամս
31 քառասուն։ Եւ ննջեաց Սողոմոն[4], եւ
թաղեցին զնա ի քաղաքին Դաւթի հօր
իւրոյ։ Եւ թագաւորեաց Ռոբովամ որ-
դի նորա փոխանակ նորա։

Գլ. Ժ

1 Եւ եկն Ռոբովամ ի Սիւքեմ, վասն զի
ի Սիւքեմ գայր ամենայն Իսրայէլ թա-
2 գաւորեցուցանել զնա։ Եւ եղեւ իբրեւ
լուաւ Յերոբովամ որդի Նաբատայ, եւ
ինքն էր յԵգիպտոս փախուցեալ յերե-
սաց արքայի Սողոմոնի, [1]եւ բնակէր Յե-
րոբովամ յԵգիպտոս՝՝ եւ դարձաւ Յե-
3 րոբովամ յԵգիպտոսէ։ Առաքեցին եւ
կոչեցին զնա, եւ եկն Յերոբովամ եւ
ամենայն [5]եկեղեցին Իսրայէլի առ ար-
4 քայ՝՝ Ռոբովամ եւ ասեն, Հայր քո խստա-
ցոյց զլուծ մեր. եւ արդ թեթեւացո զխիստ
ծառայութիւն հօր քո, եւ զլուծ նորա
զծանր զոր եդ ի վերայ մեր, եւ ծա-
5 ռայեսցուք քեզ։ Եւ ասէ ցնոսա, Եր-
թայք մինչեւ յաւուրս երիս, եւ եկեա-
ջիք առ իս. եւ գնաց ժողովուրդն։
6 Եւ ժողովեաց արքայ Ռոբովամ զծերսն
որք կային առաջի Սողոմոնի հօր նորա
մինչդեռ կենդանի էր նա, եւ ասէ,
Զիա՞րդ թուի ձեզ, եւ զի՞նչ խորհիք
պատասխանի տալ ժողովրդեանն այնմ
7 բան ինչ։ Եւ խօսեցան ընդ նմա եւ ա-
սեն, Եթէ այսօր լինիս բարի ժողովր-
դեանդ այդմ, եւ հաճոյ լինիս եւ խօ-
սեսցիս ընդ նոսա բանս բարիս, եւ ե-
ղիցին քեզ ծառայք զամենայն աւուրս։
8 Եւ եթող զխորհուրդ ծերոցն զոր խոր-
հեցան ընդ նմա, եւ խորհեցաւ ընդ
մանկտի սննդակիցան իւր որք կային ա-
9 ռաջի նորա. Եւ ասէ ցնոսա, Զի՞նչ
թուի ձեզ, եւ պատասխանի տաց բան
ժողովրդեանն այնմիկ որք խօսեցան ընդ
իս եւ ասացին, Թեթեւացո ի լծոյն զոր
10 եդ հայր քո ի վերայ մեր։ Եւ խօսեցան
ընդ նմա մանկտին սննդակիցքն նորա,
Այսպէս խօսեսցիս ընդ ժողովրդեանն որ
խօսեցաւ ընդ քեզ եւ ասաց, Հայր քո
ծանրացոյց զլուծն մեր, եւ դու թեթեւ
մեզ. այսպէս ասասցես. Փոքր մատն
իմ ստուարագոյն է քան զմէջ հօր ի-
11 մոյ. Եւ արդ հայրն իմ խրատեաց զձեզ
ծանր լծով, եւ ես յաւելից ի լուծն ձեր.
հայր իմ խրատեաց զձեզ գաւազանօք,
եւ ես խրատեցից զձեզ կարճօք։
12 Եկն Յերոբովամ եւ ամենայն ժողո-
վուրդն առ Ռոբովամ յաւուրն երրոր-
դի, որպէս խօսեցաւ արքայ եւ ասաց,
13 Դարձջիք առ իս յաւուրն երրորդի։ Եւ
պատասխանի արար արքայ խիստ, եւ
եթող արքայ Ռոբովամ զխորհուրդ ծե-
14 րոցն, Եւ խօսեցաւ ընդ նոսա ըստ
խորհրդոյ մանկանցն եւ ասէ, Հայրն իմ
ծանրացոյց զլուծ ձեր, եւ ես յաւելից
յայն. հայրն իմ խրատեաց զձեզ գաւա-
զանօք, եւ ես խրատեցից զձեզ կար-
15 ճօք։ Եւ ոչ լուաւ արքայ ժողովրդեանն.
վասն զի էր [6]կործանումն յԱստուծոյ.
եւ հաստատեաց՝՝ Տէր զբան իւր զոր
խօսեցաւ ի ձեռն Աքիայ Սիլովնացւոյ
յաղագս Յերոբովամու որդւոյ [7]Նաբա-
տայ եւ ամենայն Իսրայէլի. եւ՝՝ ոչ լուաւ
16 արքայ նոցա. Պատասխանի ետ ժողո-
վուրդն արքայի եւ ասեն, Զի՞նչ բաժին
կայ մեր ընդ Դաւթի, եւ կամ ժառան-
գութիւն ընդ որդւոյն Յեսսեայ. երթ
գնա ի բնակութիւնս քո, Իսրայէլ. եւ
արդ տես դու զտուն քո, Դաւիթ. եւ
գնաց ամենայն Իսրայէլ ի բնակութիւնս
17 իւր։ Եւ [8]արքն Իսրայէլի մնացեալքն՝՝
ի քաղաքս Յուդայ՝ թագաւորեցուցին ի
18 վերայ իւրեանց զՌոբովամ։ Եւ առա-
քեաց արքայ Ռոբովամ զԱդոնիրամ որ
էր ի վերայ հարկացն, եւ քարկոծեցին
զնա որդիքն Իսրայէլի քարամբք, եւ
մեռաւ։ Եւ արքայ Ռոբովամ փութա-
ցաւ ելանել ի կառս իւր եւ փախչել
19 յԵրուսաղէմ։ Եւ անգոսնեաց Իսրայէլ
զտունն Դաւթի մինչեւ յօրս յայս։

[1]Եբր. զոլոոէ [2]Եբր. Ադդովայ [3]Եբր. Սողոմոն յԵրուսաղէմ [4]Եբր.-յէւյէն յաւելու, ընդ հարս իւր [5]Եբր. Իսրայէլ և խօսեցան առ

[6]Եբր. պատճառեալ առ ի յԱստուծոյ, զի հաստատեսցէ [7]Եբր. Նաբատայ։ (16) Եւ ամենայն Իսրայէլ իբրեւ ետես եթէ [8]Եբր. որդիքն Իսրայէլի որ բնակեալ էին

Գլ. ԺԱ

1 Եւ եկն Ռոբովամ յԵրուսաղէմ, եւ ժո-
ղովեաց զՅուդա եւ զԲենիամին հա-
րեւր եւ ութսուն հազար երիտասար-
դաց որք առնէին պատերազմ, [1]եւ տայր˝
պատերազմ ընդ Իսրայէլի դարձուցա-
2 նել զթագաւորութիւնն յինքն։ Եւ ե-
ղեւ բան Տեառն առ Սամէաս այրն Աս-
3 տուծոյ եւ ասէ, Խօսեաց ընդ Ռոբո-
վամայ որդւոյ Սողոմոնի [2]եւ ընդ ամե-
նայն Յուդայ եւ Բենիամենի˝ եւ աստ-
4 ցես, Այսպէս ասէ Տէր. Մի՛ ելանէք եւ
մի՛ պատերազմիք ընդ եղբարս ձեր,
դարձցի իւրաքանչիւր ոք ի տուն իւր.
վասն զի յինէն եղեւ բանդ այդ։ Եւ
լուան բանին Տեառն, դարձան ոչ եւս
երթալ ի վերայ Յերոբովամայ։
5 Եւ բնակեաց Ռոբովամ յԵրուսաղէմ,
եւ շինեաց քաղաքս պարսպաւորս ի
6 Հրէաստանի. Եւ շինեաց զԲեթղեհեմ
7 եւ զԵտամն եւ զԹեկուա Եւ զԲեթ-
8 սուրա եւ զՍոկքով եւ զՈդոզամ Եւ
9 զԳէթ եւ զՄարիսան եւ զԶիփ Եւ զԱ-
դովրայիմ եւ զԼաքիս եւ զԱզեկա եւ
10 զՍարաա Եւ զԱեղոն եւ զՔեբրոն [3]որ
էր Յուդայ եւ ի Բենիամին քաղաքս
11 պարսպաւորս։ Եւ ամրացոյց զնոսա
պարսպօք˝, եւ ետ ի նոսա իշխանս եւ
12 համբարս կերակրոց՝ ձէթ եւ գինի. Ըստ
քաղաքաց վահանս եւ նիզակս, եւ զօ-
րացոյց զնոսա յաճախութեամբ յոյժ. եւ
էին նորա Յուդաս եւ Բենիամին։
13 Եւ քահանայքն եւ Ղեւտացիքն որք
էին յամենայն Իսրայէլի, ժողովեցան
14 առ նա յամենայն սահմանացն. (Վասն
զի թողին Ղեւտացիքն զբնակութիւնս
կալուածոց իւրեանց, եւ գնացին առ
Յուդա եւ յԵրուսաղէմ. քանզի եհան
զնոսա Յերոբովամ եւ որդիք նորա, ոչ
15 եւս պաշտել զՏէր։ Եւ կացոյց իւր
քուրմս բարձանցն [4]եւ կռոցն˝ եւ մնոտ-
ւոցն, եւ երինջոցն զորս արար Յերո-
16 բովամ.) Եւ [5]եհան զնոսա ի ցեղիցն˝ Իս-
րայէլի, որք ետուն զսիրտս իւրեանց
խնդրել զՏէր Աստուած Իսրայէլի, ե-
կին յԵրուսաղէմ զոհել Տեառն Աստու-
17 ծոյ հարցն իւրեանց։ Եւ զօրացու-
ցին զթագաւորութիւնն Յուդայ. եւ
հզօրացաւ Ռոբովամ որդի Սողոմոնի
ամս երիս. վասն զի գնաց ի ճանա-
պարհս Դաւթի եւ Սողոմոնի զերիս ամս։
18 Եւ առ իւր Ռոբովամ կին զՄովգաթ
դուստր Յերիմութայ որդւոյ Դաւթի,
եւ զԱբիայ դուստր Եղիաբայ որդւոյ
19 Յեսսեայ. Եւ ծնաւ նմա որդիս զՅե-
20 բուս եւ զՍամարիա եւ զԶաամ։ Եւ յետ
այսորիկ առ զՄաաքա դուստր Աբիսա-
ղոմայ, եւ ծնաւ նմա զԱբիա եւ զԵթ-
21 թի եւ զԻզա եւ զՍաղեմովթ։ Եւ սի-
րեաց Ռոբովամ զՄաաքա դուստր Աբե-
սողոմայ քան զամենայն կանայս իւր
եւ զհարճս իւր. վասն զի կանայս ու-
նէր ութուտասն եւ հարճս վաթսուն,
եւ ծնաւ ուստերս քսան եւ ութ եւ
22 դստերս վաթսուն։ Եւ կացոյց իշխան
Ռոբովամ զԱբիա որ էր ի Մաաքայ, իշ-
խան ի վերայ եղբարցն իւրոց, վասն
զի թագաւորեցուցանել խորհէր զնա։
23 Եւ [6]աճեաց առաւել քան զամենայն որ-
դիս նորա˝ յամենայն սահմանս Յուդայ
եւ Բենիամենի, ի քաղաքսն ամուրս,
եւ ետ ի նոսա կերակուր բազում յոյժ.
եւ խնդրեաց բազմութիւն կանանց։

Գլ. ԺԲ

1 Եւ եղեւ իբրեւ [7]պատրաստեցաւ թա-
գաւորութիւնն Ռոբովամայ, եւ յորժամ
զօրացաւ, եթող զպատուիրանս Տեառն,
եւ ամենայն Իսրայէլ ընդ նմա։
2 Եւ եղեւ ի հինգերորդի ամի թագա-
ւորութեանն Ռոբովամայ ել Սուսակիմ
արքայ Եգիպտոսի ի վերայ Երուսաղե-
մի, վասն զի մեղան առաջի Տեառն,
3 Հազար եւ երկերիւր կառօք եւ վաթ-
սուն հազար երիվարօք. եւ ոչ գոյր թիւ
բազմութեանն եկելոյ ընդ նմա յԵգիպ-
տոսէ. Լիբէացիք, Տրոգղոդացիք, Ե-
4 թէովպացիք. Եւ զօրացան ի վերայ ա-
մուր քաղաքացն որ էին Յուդայ. եւ
5 եկն յԵրուսաղէմ։ Եւ Սամէաս մար-
գարէ եկն առ Ռոբովամ եւ առ իշխանսն
Յուդայ ժողովեալսն յԵրուսաղէմ յերե-
սաց Սուսակիմայ, եւ ասէ ցնոսա,
Այսպէս ասէ Տէր. Դուք թողէք զիս,
եւ ես թողից զձեզ ի ձեռս Սուսակի-
6 մայ։ Եւ [8]ամաչեցին իշխանքն Իսրա-
յէլի եւ արքայն, եւ ասեն, Արդար է

[1] Եբր. տալ [2] Եբր. արքայի Յուդայ և ընդ ամենայն Իսրայելի ի Յուդա և ի Բենիամին [3] Եբր. որ էին քաղաքք պարսպաւորք ի Յուդա եւ ի Բենիամին։ (11) Եւ ամրացոյց զպարիսպսն [4] Յեբր. [illegible] [5] Եբր. զհետ նոցա յամենայն ցեղիցն

[6] Եբր. առնէր իմաստութեամբ եւ ցրուէր զամենայն որդիս իւր [7] Եբր. հաստատեցաւ [8] Կամ, խոնարհեցան

7 Տէր։ Եւ իբրեւ ետես Տէր եթէ [1]պատ-
կառեցին, եղեւ բան Տեառն առ Սա-
մէաս եւ ասէ, [1]Պատկառեցին, ոչ ա-
պականեցից զդոսա. այլ տաց զդոսա իբրեւ
սակաւ մի ի փրկութիւն. եւ մի՛ կա-
թեսցէ սրտմտութիւն իմ ի վերայ [2]Ե-
8 րուսաղեմի. Վասն զի եղիցին ինձ՟ ի
ծառայս, եւ ծանիցեն զծառայութիւնն
իմ եւ զծառայութիւն թագաւորու-
9 թեանց երկրիս։ Եւ ել Սուսակիմ ար-
քայ [3]Եգիպտոսի, եւ առ զգանձսն որ
էին ի տանն Տեառն, եւ զգանձս տանն
արքայի զամենայն առ. առ եւ զվա-
հանսն ոսկեղէնս զոր արար Սողոմոն։
10 Եւ արար Ռոբովամ վահանս պղնձիս
փոխանակ նոցա. եւ կացոյց ի վերայ
նոցա [4]Սուսակիմ իշխանս սուրհան-
դակացն որք պահէին զդուռն արքա-
11 յին։ Եւ լինէր ի մտանել արքայի ի տունն
Տեառն՝ մտանէին [4]եւ պահապանքն՟ եւ
սուրհանդակքն, եւ [5]դառնային ընդ ա-
12 ռաջ՟ սուրհանդակացն։ Եւ [6]ի պատկա-
ռելն նորա՝ դարձաւ ի նմանէ բարկու-
թիւն Տեառն եւ ոչ ապականեցաւ ի
սպառ. վասն զի էին բանք բարիք ի
13 Յուդա։ Եւ զօրացաւ Ռոբովամ յԵրու-
սաղէմ, եւ թագաւորեաց. քառասուն
եւ միոյ ամի էր ի թագաւորելն իւրում.
եւ զեւթն եւ տասն ամ թագաւորեաց
յԵրուսաղէմ, ի քաղաքին զոր ընտրեաց
Տէր անուանել զանուն իւր անդ յամե-
նայն ցեղիցն Իսրայէլի. եւ անուն մօր
14 նորա Նաամա Ամմանացի։ Եւ արար չար,
վասն զի ոչ ուղղեցաւ սիրտ նորա խնդրել
15 զՏէր։ Եւ բանքն Ռոբովամայ առաջինք
եւ վերջինք, ո՞չ ահա գրեալ են ի բանս
Սամեայ մարգարէի եւ Ադդովայ տե-
սանողի [7]եւ գործք նորա՟։ Եւ պատե-
րազմ էր Ռոբովամայ ընդ Յերոբովա-
16 մայ զամենայն աւուրս։ Եւ [8]մեռաւ Ռո-
բովամ, եւ թաղեցաւ ընդ հարս իւր՟ ի
քաղաքին Դաւթի։ Եւ թագաւորեաց
Աբիա որդի նորա փոխանակ նորա։

ԳԼ. ԺԳ

1 Յամ եւ տասներորդի ամի թագաւո-
րութեանն Յերոբովամայ թագաւորեաց
Աբիա ի վերայ [9]Յուդայ եւ Երուսաղեմի
2 ամս երիս՟. Եւ անուն մօր նորա [10]Մաա-
քա դուստր Աբիսողոմայ՟. եւ էր պատե-
րազմ ի մէջ Աբիայ եւ ի մէջ Յերոբովա-
3 մայ։ Եւ կարգեցաւ Աբիա ի պատերազ-
մին զօրաւոր մարտկօք չորեք հարեւր
հազարօք արամբք զօրաւորօք. եւ Յե-
րոբովամ ճակատեցաւ ընդդէմ նորա ի
պատերազմին ութ հարեւր հազարօք զօ-
րաւորօք պատերազմողաց զօրութեամբ։
4 Եւ յարեաւ Աբիա ի լեռնէն Սոմո-
րոնայ, որ էր ի լերինն Եփրեմի, եւ ա-
սէ, Լուարուք, Յերոբովամ եւ ամե-
5 նայն Իսրայէլ. Ո՞չ է ձեր ճանաչել ե-
թէ Տէր Աստուած Իսրայէլի ետ զթա-
գաւորութիւնն [11]Իսրայէլի յաւիտեան՝
6 Դաւթի՟ եւ որդւոց նորա ուխտ աղի։ Եւ
յարեաւ Յերոբովամ որդի Նաբատայ՝
ծառայ Սողոմոնի որդւոյ Դաւթի, եւ
7 ապստամբեաց ի տեառնէ իւրմէ. Եւ
ժողովեցան առ նա արք ժանտք, որդիք
անօրէնք. եւ ընդդէմ եկաց Ռոբովա-
մայ որդւոյ Սողոմոնի. եւ Ռոբովամ էր
մանուկ եւ երկչոտ սրտիւ, եւ ոչ եկաց
8 ընդդէմ նոցա։ Եւ արդ դուք ասէք կալ
հակառակ երեսաց թագաւորութեան
Տեառն, որ է ի ձեռս որդւոց Դաւթի.
եւ դուք բազում էք յոյժ, եւ ընդ ձեզ
երինջք ոսկեղէնք զորս արար ձեզ Յե-
9 րոբովամ յաստուածս։ Միթէ ո՞չ հանէք
դուք զքահանայսն Տեառն զորդիսն Ա-
հարոնի եւ զՂեւտացիսն, եւ արարէք
ձեզ քուրմս ի ժողովրդենէ երկրիդ. ա-
մենեքեան որ գային լնուլ զձեռս զուա-
րակօք յարջառոց եւ եւթն խոյօք, եւ
10 լինէր քուրմ չաստուածոյն։ [12]Եւ մեք
զՏէր Աստուած մեր ոչ թողաք, եւ քա-
հանայքն նորա պաշտեն զՏէր, որդիք
Ահարոնի եւ Ղեւտացիք, եւ հանապազոր-
11 դեալքն ի նոցանէ՟ Ծխեն խունկս Տեառն,
եւ զողջակէզս՝ ընդ առաւօտս եւ ընդ
երեկոյս, եւ զխունկսն խառնուածոյս.
եւ հացքն առաջադրութեան ի վերայ
սուրբ սեղանոյն, եւ աշտանակն ոսկե-
ղէն եւ ճրագունքն վառեալք՝ յերեկո-

[1] Կամ, խոնարհեցան [2] Ոմն. Երուսաղեմի ի ձեռն Սուսակիմայ. (8) Բայց եւ այնպէս եղիցին նմա [3] Ոմն. Եգիպտոսի ի վերայ Երուսաղեմի [4] Յոմն. պակաս [5] Ոմն. դառնային զնոսա, եւ տանէին զնոսա ի սենեակ [6] Կամ, ի խոնարհելն [7] Ոմն. յազգահամարին [8] Ոմն. Ննջեաց Ռոբովամ ընդ հարս իւր, եւ թաղեցաւ

[9] Ոմն. Յուդայ։ (2) Ամս երիս թագաւորեաց յԵրուսաղէմ [10] Ոմն. Միքայիա դուստր Ուրիէլի Գաբաացւոյ [11] Ոմն. Դաւթի ի վերայ Իսրայէլի յաւիտեան, նմա [12] Ոմն. Այլ Տէր է Աստուած մեր, եւ մեք ոչ թողաք զնա, եւ քահանայքն որ պաշտեն զՏէր՝ որդիք Ահարոնի են, եւ Ղեւտացիքն ի պաշտաման. (11) Եւ

րեայ լուցեալք․ վասն զի պահեմք մեք
զպահպանութիւնս Տեառն Աստուծոյ
[1]հարցն մերոյ", եւ դուք թողէք զնա։
12 Եւ ահաւասիկ ընդ մեզ իշխան Տէր, եւ
քահանայք նորա եւ փողք [2]նշանակայ
նշանակել ի մեզ. եւ դուք, որդիք Իսրայե-
լի, պատերազմի՞ք ընդ Տեառն Աստուծոյ
հարցն մերոց, եւ ոչ եւս" աջողեսցի ձեզ։
13 Եւ Յերոբովամ դարձոյց զդարանա-
կալսն գալ [3]նմա զկնի կողմանէ", եւ
եղեն առաջի Յուդայ, եւ դարանակալքն
14 յետուստ։ Եւ դարձաւ Յուդաս, եւ ա-
հա պատերազմն նոցա առաջի եւ զկնի.
եւ գոչեցին առ Տէր, եւ քահանայքն
15 հարին զփողսն, Եւ գոչեցին արք Յու-
դայ. եւ եղեւ ի գոչել արանց Յուդայ,
եւ [4]Տէր եհար զՅերոբովամ եւ զԻսրա-
16 յէլ առաջի Աբիայ եւ Յուդայ։ Եւ փա-
խեան որդիքն Իսրայէլի յերեսաց Յու-
դայ, եւ մատնեաց զնոսա [4]Տէր ի ձեռս
17 նոցա։ Եւ եհար ի նոցանէ Աբիա եւ զօրն
նորա հարուածս մեծամեծս, եւ անկան
վիրաւորք յԻսրայէլէ [5]հինգ հազար" արք
18 զօրաւորք։ Եւ նկունեցան որդիքն Իս-
րայէլի յաւուր յայնմիկ, եւ զօրացան
որդիքն Յուդայ. վասն զի յուսացան ի
19 Տէր Աստուած հարցն իւրեանց։ Եւ հա-
լածեաց Աբիա զՅերոբովամ, եւ առ ի
նմանէ քաղաքս, զԲեթէլ եւ զգեղս
նորա, եւ [6]զԱնա եւ զգեղս նորա, եւ
զԵփրոն եւ [7]զգաւառս նորա, եւ զԲեա
20 եւ զգեղս նորա"։ Եւ ոչ եւս գոյր զօ-
րութիւն Յերոբովամայ զամենայն ա-
ւուրս Աբիայ. եւ եհար զնա Տէր եւ
վախճանեցաւ։
21 Եւ զօրացաւ Աբիա, եւ առ իւր կա-
նայս չորեքտասան, եւ ծնաւ ուստերս
քսան եւ երկուս եւ դստերս վեշտա-
22 սան։ Եւ մնացեալ բանքն Աբիայ եւ
գործք նորա եւ խօսք նորա, ահա գրեալ
են ի գիրս մարգարէին Ադդովայ։

Գլ. ԺԴ

1 Եւ [8]մեռաւ Աբիա ընդ հարս իւր, եւ
թաղեցին զնա ի քաղաքին Դաւթի. եւ
թագաւորեաց Ասա որդի նորա փոխա-
նակ նորա. յաւուրս Ասայի հանդար-
2 տեաց երկիրն Յուդայ ամս տասն։ Եւ
արար բարի եւ ուղղութիւն առաջի Տեառն
3 Աստուծոյ իւրոյ. Եւ ի բաց արար զսե-
ղանս օտարացն եւ զբարձունսն, եւ
խորտակեաց զարձանսն, եւ այրեաց
4 զանտառսն։ Եւ ասաց ցՅուդա խնդրել
զՏէր Աստուած հարցն իւրեանց, եւ
5 առնել զօրէնս եւ զպատուիրանս։ Եւ
ի բաց արար յամենայն քաղաքացն Յու-
6 դայ [9]զսեղանս եւ զկուռս. Եւ խաղաղա-
ցան քաղաքք պարսպաւորք" յերկրին
Յուդայ. վասն զի խաղաղացաւ երկիրն,
եւ ոչ գոյր ուսանեք նմա պատերազմ
յամսն յայնոսիկ. վասն զի հանգոյց զնա
7 Տէր. Եւ ասէ ցՅուդա, Շինեսցուք զքա-
ղաքսն զայնոսիկ, եւ արասցուք պա-
րիսպս եւ աշտարակս եւ դրունս եւ նիգս
[10]որով տիրեմք երկրիս". զի զոր օրինակ
խնդրեցաք զՏէր Աստուած մեր, [11]եւ նա
խնդրեաց զմեզ" եւ հանգոյց զմեզ շուր-
8 ջանակի, եւ [12]յաջողեաց մեզ"։ Եւ եղեւ
Ասայի զօր զինակրաց որք բառնային վա-
հանս եւ նիզակս յերկրին Յուդայ՝ երեք
հարեւր հազար. եւ յերկրին Բենիամինի
ասպարաւորք եւ աղեղնաւորք՝ երկերիւր
եւ [13]վաթսուն հազար. ամենեքեան նո-
քա պատերազմողք զօրութեամբ։
9 Եւ ել ի վերայ նոցա Զարեհ Եթէով-
պացի զօրութեամբ հազար հազարօք եւ
երեքհարեւր կառօք, եւ եկն մինչեւ ի
10 Մարիսա։ Եւ գնաց Ասա ընդդէմ նո-
րա, եւ ճակատեցաւ պատերազմն [14]ի
11 ձորն՝ ի հիւսիսոյ Մարիսայ"։ Եւ գոչեաց
Ասա առ Տէր Աստուած իւր, եւ ասէ,
Տէր, ոչ տկարանայ քեզ ապրեցուցա-
նել բազմօք եւ սակաւուք. զօրացո
զմեզ, Տէր Աստուած մեր, վասն զի ի
քեզ յուսացաք, եւ անուամբ քով եկաք
ի վերայ բազմութեանս այսորիկ. Տէր
Աստուած մեր, մի՛ յաղթահարեսցէ զքեզ
12 մարդ։ Եւ եհար Տէր զԵթէովպացիսն ա-
ռաջի [15]Յուդայ, եւ փախեան Եթէովպա-
13 ցիքն։ Եւ հալածեաց Ասա եւ զօրն իւր
մինչեւ [16]ի Գեդովր, եւ անկան Եթէով-

---

[1] Եբր. մերոյ [2] Եբր. ազդեցութեան ազդ առնել ընդդէմ ձեզ. որդիք Իսրայելի, մի՛ պատերազմիք ընդ Տեառն Աստուծոյ հարցն ձերոց, զի ոչ [3] Եբր. զկնի կողմանէ նոցա [4] Եբր. Աստուած [5] Եբր. հինգ հարեւր հազար [6] Եբր. զՅեսանա [7] Եբր. զգեղս նորա [8] Եբր. ննջեաց

[9] Եբր. զբարձունսն և զպատկերս արեգական. եւ հանգեաւ թագաւորութիւնն առաջի նորա։ (6) Եւ շինեաց քաղաքս պարսպաւորս [10] Եբր. մինչդեռ երկիրս առաջի մեր է [11] Եբր. խնդրեցաք [12] Եբր. շինեցին եւ յաջողեցան [13] Եբր. ութսուն [14] Եբր. ի ձորն Սեփաթայ առ Մարիսայ [15] Եբր. Ասայի եւ առաջի Յուդայ [16] Եբր. ի Գերարա

պացիքն մինչեւ ոչ մնալ ի նոցանէ ապրեալ. քանզի խորտակեցան առաջի Տեառն եւ առաջի զօրութեան նորա, եւ
14 կողոպտեցին աւար բազում։ Եւ կոտորեցին [1]զգեղս նոցա շուրջ զԳերարաւն", վասն զի եղեն արհաւիրք ի Տեառնէ ի վերայ նոցա. եւ առին աւար զամենայն քաղաքս նոցա, քանզի աւար
15 բազում եղեւ նոցա։ Այլ եւ զվրանս անասնոցն նոցա [2]առին։ Եւ զմասոնսն կոտորեցին, եւ առին" խաշինս բազումս եւ ուղտս, եւ դարձան յԵրուսաղէմ։

ԳԼ. ԺԵ

1 Եւ Ազարիաս որդի Ադադայ եղեւ ի վե-
2 րայ նորա Հոգի [3]Տեառն. Եւ ել ընդ առաջ Ասայի եւ [4]ամենայն Յուդայ եւ Բենիամենի եւ ասէ", Լուարուք ինձ, Ասա եւ ամենայն Յուդա եւ Բենիամին. Տէր ընդ ձեզ, վասն լինելոյ ձերոյ ընդ նմա. եւ արդ եթէ խնդրէք զնա, գտցի ձեզ, եւ եթէ թողուք զնա,
3 թողցէ զձեզ։ Եւ աւուրք բազումք յԻսրայէլի եղեն՝ ոչ Աստուած ճշմարիտ, եւ ոչ քահանայ որ ցուցանէր, եւ ոչ օ-
4 րէնք։ [5]Որ դարձոյց զնոսա ի Տէր Աս-
5 տուած Իսրայէլի", եւ գտաւ ի նոսա։ Ի ժամանակին յայնմիկ ոչ գոյր խաղաղութիւն այնոցիկ որք մտանէին եւ որք ելանէին. վասն զի արհաւիրք [6]ի Տեառնէ անկան ի վերայ ամենեցուն բնակ-
6 չաց գաւառացն. Եւ պատերազմէր ազգ ընդ ազգի եւ քաղաք ընդ քաղաքի. վասն զի Աստուած զարհուրեցոյց զնո-
7 սա ամենայն նեղութեամբք։ Եւ արդ դուք զօրացարուք, եւ մի լքցին ձեռք ձեր. քանզի գոն վարձք գործոց ձերոց։
8 Եւ [7]ի լսել զբանս զայսոսիկ եւ զմարգարէութիւն Ազարիայ մարգարէի, զօրացաւ եւ եհան արտաքս զամենայն զպղծութիւնն յամենայն երկրէն Յուդայ եւ Բենիամենի, եւ ի քաղաքացն զորս կալաւ ի լերինն Եփրեմի, եւ արար նաւակատիս սեղանոյն Տեառն որ
9 էր առաջի տաճարին Տեառն. Եւ եկեղեցացոյց զՅուդա եւ զԲենիամին, եւ զեկեանս զպանդուխտս ընդ նմա, յԵփրեմայ եւ ի Մանասէէ եւ ի Շմաւոնէ.

[1] Եբր. զամենայն քաղաքս շուրջ զԳերարաւ [2] Եբր. հարին, եւ առին [3] Եբր. Աստուծոյ [4] Եբր. ասէ ցնա [5] Եբր. Եւ ի նեղութեան իւրեանց դարձան ի Տէր Աստուած Իսրայէլի եւ խնդրեցին զնա [6] Յեբր. դ–ղ–ե [7] Եբր. ի լսել Ասայի

վասն զի յաւելան ի նա բազումք յԻսրայէլէ ի տեսանելն նոցա՝ թէ Տէր Աս-
10 տուած նորա ընդ նմա է։ Եւ ժողովեցան յԵրուսաղէմ յամսեանն երրորդի, ի հնգետասաներորդում ամի թագաւո-
11 րութեանն Ասայի. Եւ [8]եղին Տեառն յաւուրն յայնմ յաւարայն զոր ածին՝ զուարակս եւթն հարեւր եւ ոչխարս
12 եւթն հազար։ Եւ [9]եդ ուխտ՝ խնդրել զՏէր Աստուած հարցն իւրեանց յամե-
13 նայն սրտէ եւ յամենայն անձնէ. Եւ ամենայն որ ոչ խնդրեսցէ զՏէր Աստուած Իսրայէլի՝ մեռցի յերիտասարդէ մինչեւ
14 ի ծերն եւ յառնէ մինչեւ ցկին։ Եւ երդուան Տեառն [10]մեծաձայն եւ եղջերեաւ
15 փողովք"։ Եւ ուրախ եղեւ ամենայն Յուդա վասն երդմանն, զի յամենայն սրտէ իւրեանց երդուան, եւ ամենայն կամօք խնդրեցին զնա. եւ գտաւ նոցա եւ հանգոյց զնոսա Տէր շուրջանակի։
16 Եւ զՄաաքա զմայրն իւր ի բաց մերժեաց[11], վասն զի էր Աստարտեայ պաշտօնեայ. եւ խորտակեաց զկուռսն եւ
17 այրեաց ի հեղեղատին Կեդրոնի։ Սակայն [12]զբարձաւնսն ոչ բարձին, եւ սակայն եւս կայր ի Յուդա եւ յԻսրայէլ". բայց սիրտն Ասայի եղեւ [13]լի զամենայն
18 աւուրս կենաց իւրոց։ Եւ տարաւ ի ներքս զսրբութիւնն [14]Դաւթի հօր իւրոյ, եւ զսրբութիւնս Տեառն" Աստուծոյ,
19 արծաթ եւ ոսկի եւ սպասս։ Եւ պատերազմ ոչ գոյր [6]ընդ նմա մինչեւ յերեսներորդ եւ հինգերորդ ամ թագաւորութեանն Ասայի։

ԳԼ. ԺԶ

1 Եւ յերեսներորդ [15]ութերորդ ամի թագաւորութեանն Ասայի ել Բաասա արքայ Իսրայէլի ի վերայ Յուդայ, եւ շինեաց զՌամա, [16]ոչ տալով ելս Ասայի արքա-
2 յի" Յուդայ։ Եւ առ Ասա ոսկի եւ արծաթ ի գանձուց տանն Տեառն եւ ի տանէ թագաւորին, եւ առաքեաց առ [17]որդին Ադերայ" արքայն Ասորւոց որ բնակէր
3 ի Դամասկոս, եւ ասէ, [18]Դիր ուխտ ի մէջ իմ եւ քո, եւ ի մէջ հօր իմոյ եւ

[8] Եբր. զենին [9] Եբր. եդին [10] Եբր. ձայնիւ մեծաւ եւ ցնծութեամբ եւ փողով եւ շեփորաւ [11] Եբր. յ–ե–ե– յ––ել––, ի տիկնութենէ [12] Եբր. բարձաւնք ոչ բարձան յԻսրայելէ [13] Եբր. ողջ, կամ, կատարեալ [14] Եբր. հօր իւրոյ եւ զսրբութիւնս իւր ի տունն [15] Եբր. վեցերորդ [16] Եբր. չտալ երթեւեկ առ Ասա արքայ [17] Եբր. Բենադադ [18] Եբր. է

հօր քո. ահաւասիկ առաքեցի քեզ ար-
ծաթ եւ ոսկի, եկ [1]եւ մերժեա յինէն
զԲաասա արքայ" Իսրայելի, եւ գնասցէ
4 ի բաց յինէն։ Եւ լուաւ [2]որդին Ադերայ
արքայ Ասորւոց", եւ առաքեաց զիշ-
խանս զօրացն իւրոց ի քաղաքն Իս-
րայելի. եւ եհար զԱւոն եւ զԴան եւ
զԱբելմայիմ, եւ զամենայն [3]շուրջ զգա-
5 ւառաւն" Նեփթաղիմայ։ Եւ եղեւ իբ-
րեւ լուաւ Բաասա, ի բաց [4]արձակեաց՝
ոչ եւս շինել զՌամա. եւ դադարեաց
6 զգործն նորա"։ Եւ Ասա արքայ ած զա-
մենայն Յուդաս, եւ առ զքարինս Ռա-
մայ եւ զփայտս նորա զոր շինեաց Բաասա,
եւ շինեաց նոքօք զԳաբաա եւ զՄասփա։
7 Ի ժամանակին յայնմ եկն Անանիա
մարգարէ առ Ասա արքայ Յուդայ եւ
ասէ ցնա, Վասն զի յուսացար դու յար-
քայն Ասորւոց եւ ոչ յուսացար ի Տէր
Աստուած քո, յաղագս այնորիկ ապրե-
ցաւ զօր արքային [5]Իսրայելի ի ձեռաց
8 քոց։ Ո՞չ ապաքէն Եթէովպացիք եւ Լի-
բէացիք էին զօրք բազումք, [6]համար-
ձակութեամբ բազում հեծելովք յոյժ
եկին", եւ ի յուսալն քո ի Տէր՝ մատ-
9 նեաց զնոսա Տէր ի ձեռս քո. Վասն զի
աչք Տեառն հային յամենայն երկիր զօ-
րացուցանել [7]յամենայն յի սրտից զնա".
Եւ արդ ագիտացար յայսմիկ. յայսմ հե-
10 տէ եղիցի քեզ պատերազմ։ Եւ սրտմտե-
ցաւ Ասա մարգարէին եւ եդ զնա ի բան-
տի. վասն զի բարկացաւ յաղագս այ-
նորիկ. եւ [8]ժանտացաւ Ասա ի ժողո-
վուրդն" ի ժամանակին յայնմ։
11 Եւ ահա բանք Ասայի առաջինք եւ
վերջինք՝ գրեալ են ի գիրս Թագաւորացն
12 Յուդայ եւ Իսրայելի։ Եւ ախտացաւ Ա-
սայի ոտք յերեսներորդի եւ յիններորդի
ամի թագաւորութեանն իւրոյ, եւ յոյժ
հիւանդացաւ. եւ ի հիւանդանալն իւրում
ոչ խնդրեաց զՏէր, այլ խնդրեաց բժիշկս։
13 Եւ ննջեաց Ասա ընդ հարս իւր, եւ վախ-
ճանեցաւ ի քառասներորդի եւ յառաջ-
նում ամի թագաւորութեանն իւրոյ։
14 Եւ թաղեցին զնա ի շիրմին զոր փորեաց
իւր ի քաղաքին Դաւթի, եւ ննջեցուցին
զնա ի գահոյսն, եւ լցին խնկովք
եւ ազգի ազգի իւղովք իւղեփեցաց, եւ
[9]արարին նմա յուղարկութիւն մեծ" յոյժ։

ԳԼ. ԺԷ

1 Եւ թագաւորեաց Յովսափատ որդի
նորա փոխանակ նորա. եւ զօրացաւ
2 Յովսափատ ի վերայ Իսրայելի։ Եւ ետ
զօրս յամենայն քաղաքն Յուդայ յա-
մուրս, եւ կացոյց իշխանս [10]յամենայն
քաղաքն" Եփրեմի, զորս առ արքայ
3 Ասա հայրն նորա։ Եւ եղեւ Տէր ընդ
Յովսափատայ. վասն զի գնաց ի ճա-
նապարհս հօր [11]իւրոյ յառաջինս, եւ ոչ
4 խնդրեաց [12]զկուռսն, Այլ զՏէր Աստուած
հօր իւրոյ խնդրեաց, եւ ի պատուիրանս
[13]հօրն իւրոյ" գնաց. եւ ոչ էին իբրեւ
5 զԻսրայելի գործք նորա։ Եւ [14]յաջողե-
ցաւ թագաւորութիւնն" ի ձեռս նորա.
եւ ետ ամենայն Յուդա ընծայս Յովսա-
փատայ, եւ եղեն նորա մեծութիւն եւ
6 փառք բազումք. Եւ բարձրացաւ սիրտ
նորա ի ճանապարհս Տեառն. եւ այլ եւս
եբարձ զբարձաւանդակսն, եւ զան-
տառսն յերկրէն Յուդայ։
7 Եւ յերրորդ ամի թագաւորութեանն
իւրոյ առաքեաց զիշխանս իւր [15]եւ զոր-
դիս զօրաւորացն" զԱբդիաս եւ զԶա-
քարիաս եւ զՆաթանայէլ եւ զՄիքիաս՝
8 ուսուցանել ի քաղաքսն Յուդայ. Եւ ընդ
նոսա Ղեւտացիքն Սամուիաս եւ Նա-
թանիաս եւ Զաբդիաս եւ Ասիէլ եւ Սե-
միրամովթ եւ Յովնաթան եւ Ադոնիաս
[16]եւ Տաբովնիաս՝ Ղեւտացիք. եւ ընդ
նոսա Եղիսամա եւ Յովրամ քահանայք.
9 Եւ ուսուցանէին զՅուդա, եւ ընդ նոսա
գիրք օրինացն Տեառն, եւ անցանէին
ընդ քաղաքսն Յուդայ, եւ ուսուցանէին
զժողովուրդն։
10 Եւ եղեն արհաւիրք ի Տեառնէ ի վերայ
թագաւորաց երկրին որ շուրջ զՅուդայիւ,
եւ ոչ պատերազմէին ընդ Յովսափա-
11 տայ։ Եւ յայլազգեացն բերէին Յովսա-
փատայ ընծայս [17]ոսկի եւ արծաթ եւ
պատարագս", եւ Արաբացիքն ածէին
նմա խոյս յօչխարաց՝ եւթն հազար եւ
եւթն հարիւր, եւ նոխազս եւթն հա-

---

[1] Ոսկ. եղծ զուխտ քո ընդ Բաասայ արքայի [2] Ոսկ. Բենադադ արքայի Ասորի [3] Ոսկ. շտեմարանս քաղաքացն [4] Ոսկ. եկաց ի շինելոյ զՌամա, եւ դադարեցոյց զգործս իւր [5] Ոսկ. Ասորւոց [6] Ոսկ. կառօք եւ հեծելովք բազում յոյժ [7] Ոսկ. զամենայն որ կատարեալ է սրտիւ առ նա [8] Ոսկ. չարչարեաց Ասա ի ժողովրդենէն

[9] Ոսկ. այրեցին նմա խունկ բազում [10] Ոսկ. յերկրին Յուդայ եւ ի քաղաքսն [11] Ոսկ. իւրոյ Դաւթի [12] Ոսկ. զԲահաղիմ [13] Ոսկ. նորա [14] Ոսկ. հաստատեաց Տէր զթագաւորութիւնն [15] Ոսկ. զԲենհայիլ եւ [16] Ոսկ. եւ Տուբիաս եւ [17] Ոսկ. եւ արծաթ ի հարկ

12 զար եւ եւթն հարիւր ։ Եւ երթալով
Յովսափատ մեծանայր ի բարձրութիւն .
եւ շինեաց [1]տունս ի Հրէաստանի քա-
13 ղաքս ամուրս՝ ։ Եւ գործք բազումք ե-
ղեն նորա [2]ի Հրէաստանի . եւ արք զօ-
րաւորք պատերազմողք ուժով յԵրու-
14 սաղէմ ։ Եւ այս էր թիւ նոցա ըստ տանց
տոհմիցն իւրեանց . ի Յուդայի հազա-
րապետք՝ Եդնաս իշխան , եւ ընդ նմա
որդիք զօրաւորք զօրութեամբ երեք հա-
15 րեւր հազար . Եւ [3]ընդ նոսա՝ Յովնան
իշխան , եւ ընդ նմա երկերիւր ութսուն
16 հազար . Եւ [3]ընդ նմա՝ Ամասէաս որդի
Զաքարեայ յօժարեալն ի Տէր , ընդ նմա
17 երկերիւր հազար զօրաւորք ուժով ։ Եւ
ի Բենիամենէ զօրաւոր ուժով Եղիադա ,
եւ ընդ նմա աղեղնաւորք եւ [4]սպարա-
18 ւորք երկերիւր հազար . Եւ [3]ընդ նո-
սա՝ Յովզաբադ , եւ ընդ նմա հարիւր
եւ ութսուն հազար զօրաւորք ի պատե-
19 րազմի ։ Սոքա էին պաշտօնեայք ար-
քային , բաց յայնցանէ զորս եդ արքայ
ի քաղաքսն ամուրս յամենայն Հրէաս-
տանի ։

## ԳԼ . ԺԸ

1 Եւ եղեւ Յովսափատայ մեծութիւն եւ
այլ եւս , եւ փառք բազում . եւ արար
2 խնամութիւն ընդ տանն Աքաաբու ։ Եւ
էջ ի կատարել [5]տարւոյն առ Աքաաբ ի
Սամարիա . եւ եզեն նմա Աքաաբ ոչ-
խարս եւ զուարակս բազումս , եւ զօ-
րուն որ ընդ նմա. եւ [6]սիրէր զնա՝ ելանել
3 ընդ նմա յՌամովթ Գաղաադ ։ Եւ ասէ
Աքաաբ արքայ Իսրայէլի ցՅովսափատ
արքայ Յուդայ , Գա՞ս ընդ իս յՌամովթ
Գաղաադ . եւ ասէ ցնա , Որպէս ես՝
նոյնպէս եւ դու , եւ որպէս զօրք քո՝
զօրք իմ ընդ քեզ ի պատերազմին ։
4 Եւ ասէ Յովսափատ ցարքայն Իսրա-
5 յէլի , [7]Խնդրեսցուք այսօր զՏէր ։ Եւ ժո-
ղովեաց արքայն Իսրայէլի զմարգարէսն
[8]Իսրայէլի արս չորեք հարիւր , եւ ասէ
ցնոսա , եթէ Երթա՞յց յՌամովթ Գա-
ղաադ ի պատերազմ , եւ կամ թէ դա-
դարեցից . եւ ասեն , Ել , եւ յաջողեսցէ
6 Աստուած ի ձեռս արքայի ։ Եւ ասէ Յով-
սափատ , Ո՞չ գոյ աստ եւ այլ եւս մար-
գարէ Տեառն , եւ խնդրեսցուք ի նմա-
7 նէ ։ Եւ ասէ արքայն Իսրայէլի ցՅովսա-
փատ, Է մեւս եւս այր առ ի խնդրել զՏէր
նովաւ . եւ ես ատեցի զնա , վասն զի
ոչ մարգարէանայ ինձ ի բարիս , [9]եւ զի
ամենայն աւուրք իւր են՝ ի չարութիւն .
նա է Միքիաս որդի Յեմլեայ ։ Եւ ասէ
Յովսափատ , Մի՛ խօսեսցի արքայ այդ-
պէս ։
8 Եւ կոչեաց արքայն Իսրայէլի ներքի-
նի մի եւ ասէ , Վաղվաղակի ած զՄի-
9 քիաս որդի Յեմլեայ ։ Եւ արքայն Իս-
րայէլի եւ Յովսափատ արքայ Յուդայ
նստէին իւրաքանչիւր ոք յաթոռ իւրում
զգեցեալ պատմուճանս. եւ նստէին [10]յըն-
դարձակ գրանն Սամարիայ . եւ ամենե-
քեան մարգարէքն առաջի նոցա մար-
10 գարէանային ։ Եւ արար իւր Սեդեկիաս
որդի Քանանու եղջիւրս երկաթեղէնս ,
եւ ասէ , Այսպէս ասէ Տէր . Սոքօք հար-
11 ցես զԱսորիս մինչեւ վախճանեսցես ։ Եւ
ամենեքեան մարգարէքն նոյնպէս մար-
գարէանային եւ ասէին , Ել յՌամովթ
Գաղաադ , եւ յաջողեսցիս . եւ տացէ
Տէր ի ձեռս արքայի ։
12 Եւ հրեշտակն որ չոգաւ կոչել զՄի-
քիաս , խօսեցաւ ընդ նմա եւ ասէ , Ա-
հա խօսեցան մարգարէքն իբրեւ ընդ մի
բերան յաղագս արքայի բարիս . եղիցին
եւ քո բանք իբրեւ զմիոյ նոցա , եւ խօ-
13 սեսցիս բարիս ։ Եւ ասէ Միքիաս , Կեն-
դանի է Տէր զի զոր ինչ ասասցէ Աս-
տուած [11]ցիս՝ զայն խօսեցայց ։
14 Եւ եկն առ արքայ . եւ ասէ ցնա ար-
քայ , Միքիա , եթէ երթա՞յց յՌամովթ
Գաղաադ ի պատերազմ , եթէ դադարե-
ցից ։ Եւ ասէ , Ել եւ յաջողեսցի , եւ
15 տայցեն ի ձեռս ձեր ։ Եւ ասէ ցնա ար-
քայ , Քանի՞ցս անգամ երդմնեցուցից
զքեզ , զի մի՛ այլ ինչ խօսեսցիս ընդ իս ,
բայց զճշմարտութիւն յանուն Տեառն ։
16 Եւ ասէ , Տեսի ցրուեալ զԻսրայէլ ի լե-
րինս՝ իբրեւ զոչխարս որոց ոչ գոյ հո-
վիւ . եւ ասէ Տէր , Ոչ գոյ դոցա իշ-
խան . դարձցի իւրաքանչիւր ոք ի տուն
17 իւր խաղաղութեամբ ։ Եւ ասէ արքայն
Իսրայէլի ցՅովսափատ , Ո՞չ ասացի քեզ
թէ ոչ մարգարէանայ նա վասն իմ բա-
18 րիս , այլ չարութիւն ։ Եւ ասէ , Ոչ այդ-
պէս . լուարուք զբան Տեառն . տեսի

[1]Ոմանք. ի Հրէաստանի բերդս եւ քաղաքս շտեմարանաց [2]Ոմանք. ի քաղաքս Հրէաստանի [3]Ոմանք. ըստ նմանէ [4]Ոմանք. ասպարաւորք [5]Ոմանք. ամաց [6]Ոմանք. հաւանեցոյց [7]Ոմանք. խնդրեա [8]Յոմանք. պակասի

[9]Ոմանք. այլ զամենայն աւուրս իւր [10]Ոմանք. ի հրապարակի ի մուտս [11]Ոմանք. իմ

զՏէր զի նստէր յաթոռն իւրում, եւ ա-
մենայն զօրք երկնից մերձ կային յաջ-
19 մէ նորա եւ յահեկէ. Եւ ասէ Տէր, Ո՞
խաբեսցէ զԱքաաբ արքայ Իսրայէլի,
զի ելցէ եւ անկցի յՌամովթ Գաղաադ.
եւ ասեն, ոմն այսպէս, եւ ոմն այն-
20 պէս։ Եւ ել հոգի եկաց առաջի Տեառն
եւ ասէ, Ես խաբեցից զնա։ Եւ ասէ
21 Տէր, Ի՞ւ։ Եւ ասէ, Ելից եւ եղէց հո-
գի սուտ ի բերան ամենայն մարգարէիցն
նորա. եւ ասէ, Խաբեսցես եւ կարաս-
22 ցես, ել եւ արա այդպէս։ Եւ արդ ա-
հա ետ Տէր հոգի սուտ ի բերան մար-
գարէիցդ քոց այդոցիկ, եւ Տէր խօսե-
ցաւ վասն քո չարիս։
23 Եւ մատուցեալ Սեդեկիա որդի Քա-
նանու եհար զծնօտն Միքիայի, եւ ասէ
ցնա, Ո՞րով ճանապարհաւ անց Ոգի
Տեառն զինեւ, եւ խօսեցաւ ընդ քեզ։
24 Եւ ասէ Միքիաս, Ահա տեսցես յաւուրն
յայնմիկ, յորում մտանիցես շտեմարան
ի շտեմարանէ թաքչել։
25 Եւ ասէ արքայն Իսրայէլի, Առէք
զՄիքիաս եւ դարձուցէք զդա առ [1]Ամե-
մեր իշխան քաղաքիս, եւ առ Յովաս
26 [2]իշխան որդի արքայի, Եւ ասասջիք,
այսպէս ասէ արքայ. Տուք զդա ի տուն
բանտին, եւ կերիցէ հաց նեղութեան,
եւ ջուր նեղութեան արբցէ, մինչեւ ի
27 դառնալն իմում խաղաղութեամբ։ Եւ
ասէ Միքիաս, Եթէ դառնալով դառնա-
ցիս խաղաղութեամբ, ոչ խօսեցաւ ընդ
իս Տէր. լուարուք ժողովուրդք ամե-
նեքեան։
28 Եւ ել արքայն Իսրայէլի եւ Յովսա-
փատ արքայ Յուդայ յՌամովթ Գա-
29 ղաադ։ Եւ ասէ արքայն Իսրայէլի ցՅով-
սափատ, [3]Ծածկեա զիս" եւ մտից ի պա-
տերազմն, եւ դու զգեցիր զպատմու-
ճանն [4]իմ։ Եւ ծածկեցաւ արքայն Իս-
30 րայէլի, եւ եմուտ" ի պատերազմ։ Եւ
արքայն Ասորւոց պատուիրեաց իշխա-
նաց կառացն որք էին ընդ նմա եւ ա-
սէ, Մի՛ պատերազմիցիք ընդ փոքու եւ
մի՛ ընդ մեծի, բայց ընդ արքային Իս-
31 րայէլի միայն։ Եւ եղեւ իբրեւ տեսին
իշխանք կառացն զՅովսափատ, եւ ա-
սեն նոքա, Սա է արքայն Իսրայէլի.
եւ շուրջ եղեն զնովաւ պատերազմել.

[1]Եբր. Ամոն [2]ՅԵբր. դոխոե [3]Եբր. Այլակեր-պեցայց [4]Եբր. քո. և այլակերպեցաւ արքայն Իսրայէլի, եւ մտին

եւ գոչեաց Յովսափատ, եւ Տէր ապրե-
ցոյց զնա. եւ դարձոյց զնոսա Աստուած
32 ի նմանէ։ Եւ եղեւ իբրեւ տեսին իշ-
խանք կառացն թէ ոչ է նա արքայն Իս-
33 րայէլի, դարձան ի նմանէ։ Եւ այր ոմն
ելից զաղեղն [5]կորովութեամբ, եւ եհար
զարքայն Իսրայէլի ընդ մէջ թոքոյն եւ
լանջաց. եւ ասէ [6]ցկառավարն, Դարձո
զձեռն քո եւ հան զիս ի պատերազմէս,
34 վասն զի վանդեցայ։ Եւ պարտեցաւ
պատերազմն յաւուր յայնմիկ, եւ ար-
քայն Իսրայէլի կայր ի վերայ կառացն
իւրոց մինչեւ ցերեկոյ ընդդէմ Ասոր-
ւոցն. եւ մեռաւ ի մտանել արեգական։

Գլ. ԺԹ

1 Եւ դարձաւ Յովսափատ արքայ Յու-
դայ ի տուն իւր խաղաղութեամբ յԵ-
2 րուսաղէմ։ Եւ ել ընդ առաջ նորա Յէու
որդի Անանեայ մարգարէ, եւ ասէ նա
ցարքայ Յովսափատ, [2]Եթէ մեղաւորին
դու օգնե՞ս, եւ կամ ատելեացն ի Տեառ-
նէ բարեկա՞մ լինիս. վասն այդորիկ ե-
ղեւ ի վերայ քո բարկութիւն ի Տեառ-
3 նէ։ Այլ զի գտան ի քեզ բանք բարիք,
եւ զի բարձեր զանտառսն յերկրէս Յու-
դայ, եւ ուղղեցեր զսիրտ քո խնդրել
4 [7]զՏէր, ապրեցոյց զքեզ Տէր"։ Եւ բնա-
կեաց Յովսափատ յԵրուսաղէմ. եւ [8]միւս-
անգամ ել ժողովուրդն" ի Բերսաբէէ
մինչեւ ի լեառնն Եփրեմի, եւ դարձոյց
զնոսա առ Տէր Աստուած հարցն ի-
5 րեանց։ Եւ կացոյց դատաւորս յամե-
նայն քաղաքսն Յուդայ եւ յամուրս յի-
6 րաքանչիւր քաղաքի։ Եւ ասէ ցդատա-
ւորսն, Տեսէք զինչ առնիցէք դուք.
վասն զի ոչ զմարդկան ինչ դատիք դուք՝
այլ զՏեառն, եւ ընդ ձեզ [9]են բանք ի-
7 րաւունց"։ Եւ արդ եղիցի երկեւղ Տեառն
ի վերայ ձեր, պահեցէք եւ արարէք,
զի ոչ գոյ Տեառն Աստուծոյ մերոյ ա-
նիրաւութիւն, եւ ոչ երեսաց աչառել,
եւ ոչ առնուլ կաշառս։
8 Այլ եւ յԵրուսաղէմ կացոյց Յովսա-
փատ ի քահանայից եւ ի Ղեւտացւոց եւ
ի հայրապետաց Իսրայէլի՝ յիրաւունս
Տեառն դատել [10]զբնակիչսն Երուսաղե-
9 մի"։ Եւ պատուիրեաց նոցա եւ ասէ,

[5]Կամ, պարզութեամբ [6]Եբր. ցկառապետն
[7]Եբր. զԱստուած [8]Եբր. դարձաւ և ել ընդ ժողովրդեանն [9]Եբր. է ի բանի դատաստանի
[10]Կամ, եւ դարձան յԵրուսաղէմ

Այնպէս արարէք երկիւղիւ Տեառն,
10 ճշմարտութեամբ եւ լի սրտիւ։ [1]Ա-
մենայն այր զիրաւունսն՝՝ զեկեալս առ
ձեզ յեղբարց ձերոց՝ ի բնակչաց քաղա-
քացն իւրեանց. ի մէջ արեան եւ ա-
րեան, եւ ի մէջ իրաց եւ պատուիրա-
նի. եւ զիրաւունս եւ զպատուիրանս ո-
րոշեցէք նոցա, եւ մի՛ մեղիցեն առ Աս-
տուած, եւ ոչ եւս եղիցի ի վերայ ձեր
բարկութիւն, եւ ոչ ի վերայ եղբարց
ձերոց. այսպէս արասջիք եւ ոչ մեղան-
11 չիցէք։ Եւ ահա Ամարիաս քահանայ՝
առաջնորդ ի վերայ ձեր յամենայն բանի
Տեառն. եւ Զաբդիաս որդի Իսմայելի ա-
ռաջնորդ ի տանն Յուդայ յամենայն բանի
արքայի. եւ [2]դպիրքն եւ Ղեւտացիք՝՝
առաջի ձեր. զօրացարուք եւ արարէք,
եւ եղիցի Տէր ընդ բարւոյն։

Գլ. Ի

1 Եւ յետ այսորիկ եկին որդիքն Ամոնայ
եւ որդիքն Մովաբայ, եւ ընդ նոսա [3]ի
Միննեցւոց անտի առ Յովսափատ ի պա-
2 տերազմ։ Եկին եւ [4]ցուցին Յովսափա-
տայ եւ ասեն, Եկն ի վերայ քո ամբոխ
բազում յայնմ կողմանէ ծովուն յԱսո-
րւոց, եւ ահա են յԱսասոնթամար՝ որ
3 է Ենգադդի։ Եւ երկեաւ, եւ ետ Յով-
սափատ զերեսս իւր խնդրել զՏէր, եւ
4 քարոզեաց պահս յամենայն Յուդա։ Եւ
ժողովեցաւ Յուդաս խնդրել զՏէր, եւ
յամենայն քաղաքացն Յուդայ եկին
5 խնդրել զՏէր։ Եւ յարեաւ Յովսափատ
ի մէջ եկեղեցւոյն Յուդայ յԵրուսաղէմ
ի տանն Տեառն՝ յանդիման [5]սրահին նո-
6 րոյ, Եւ ասէ, Տէր Աստուած հարցն մե-
րոց, ո՞չ ապաքէն դու ես Աստուած յեր-
կինս, եւ դու տիրես ամենայն թագա-
ւորութեանց հեթանոսաց, եւ ի ձեռս
քո զօրութիւն ուժոյ, եւ ոչ ոք կարէ
7 կալ ընդդէմ քո. Ո՞չ ապաքէն դու ես
[6]Տէր որ սատակեցեր զբնակիչս երկրիս
այսորիկ յերեսաց ժողովրդեան քո Իս-
րայէլի, եւ ետուր զսա զաւակի Աբրա-
8 համու սիրելւոյն քո յաւիտեան։ Բնա-
կեցին ի սմա, եւ շինեցին աստ սրբու-
9 թիւն անուան քում, եւ ասացին, Եթէ
եկեսցեն ի վերայ մեր չարիք, սուր,
դատաստանք, մահ, սով, կացցուք ա-
ռաջի տանս այսմիկ եւ առաջի քո, վասն
զի անուն քո ի վերայ տանս այսորիկ
է, եւ գոչեսցուք առ քեզ ի նեղութեան,
10 լուիցես եւ ապրեցուսցես զմեզ։ Եւ արդ
ահա որդիքն Ամոնայ եւ Մովաբու եւ
լերանն Սէիրայ, ընդ որս ոչ ետուր ան-
ցանել ընդ նոսա Իսրայելի յելանելն նո-
ցա յերկրէն Եգիպտոսի, վասն զի խո-
տորեցան ի նոցանէ, եւ ոչ սատակեցին
11 զնոսա, Եւ արդ աւասիկ նոքա [7]յանդգ-
նին գալ ի վերայ մեր, եւ հանել՝՝ զմեզ
յերկրէս ժառանգութեան մերոյ զոր ե-
12 տուր մեզ։ [8]Տէր Աստուած մեր, ո՞չ առ-
նես դատաստանս ի նոսա. վասն զի ոչ
գոյ զօրութիւն մեր ընդդէմ կալ բազում
ամբոխին այնորիկ, եւ ոչ գիտեմք զինչ
արասցուք [8]նոցա. այլ առ քեզ են աչք
13 մեր։ Եւ ամենայն Յուդաս կայր առա-
ջի Տեառն եւ մանկունք նոցա եւ կա-
նայք նոցա։
14 Եւ Ոզիելի որդւոյ Զաքարեայ յորդ-
ւոցն Բանեայ, եւ յորդւոցն Եղիելի՝ որդ-
ւոյն Մաթանեայ Ղեւտացւոյ՝ յորդւոցն
Ասափայ, եղեւ ի վերայ նորա Հոգի
15 Տեառն ի մէջ եկեղեցւոյն. Եւ ասէ,
Լուարուք, ամենայն Յուդա եւ բնա-
կիչք Երուսաղեմի եւ արքայ Յովսափատ,
այսպէս ասէ Տէր ցձեզ. Մի՛ երկնչիք եւ
մի՛ զարհուրիք յերեսաց բազում ամբոխին
այնորիկ. վասն զի ոչ ձեր է պատե-
16 րազմդ՝ այլ Աստուծոյ։ Վաղիւ իջէք ի
վերայ նոցա. ահա [9]իջանեն ընդ զառ ի
վայրն Ասեր՝՝, եւ գտջիք զնոսա առ ե-
17 զեր գետոյն [10]անապատին Յերիելի։ Ոչ
է ձեր պատերազմել անդ. [11]իմասջիք եւ
տեսջիք զփրկութիւն Տեառն որ է ընդ
ձեզ, Յուդա եւ Երուսաղէմ. մի՛ երկնչիք
եւ մի՛ զարհուրիք վաղիւ իջանել ընդ
18 առաջ նոցա, զի Տէր է ընդ ձեզ։ Եւ
խոնարհեալ Յովսափատ ի վերայ երե-
սաց իւրոց, եւ ամենայն Յուդաս եւ
բնակիչք Երուսաղեմի, անկան առաջի
19 Տեառն եւ երկիր պագին Տեառն։ Եւ
յարեան Ղեւտացիքն յորդւոցն Կահաթու
եւ յորդւոցն Կորխայ օրհնել զՏէր Աս-
տուած[12] ձայնիւ մեծաւ ի բարձունս։
20 Եւ կանխեցին ընդ առաւօտս ելին յա-

[1] Եբր. Զամենայն վէճս [2] Եբր. Ղեւտացիքն ատեկանք [3] Կամ. յԱմոնացւոց [4] Եբր. պատմեցին [5] Եբր. գաւթին [6] Եբր. Աստուած մեր

[7] Եբր. փոխանակ գան ի վերայ մեր հանել [8] Եբր. դատես [9] Եբր. ելանեն ընդ զառ ի վերն ընդ Սիս. [10] Եբր. յանդիման անապատին [11] Եբր. կանգնեսջիք, կացջիք [12] Եբր. յետին յաւելու, Իսրայելի

նապատն Թեկուայ. եւ յելանելն իւ-
րեանց եկաց Յովսափատ գոչեաց եւ ա-
սէ, Լուարուք ինձ, Յուդաս եւ բնա-
կիչք Երուսաղեմի. հաւատացէք Տեառն
Աստուծոյ [1]մերում, եւ հաւատասցի ձեզ.
հաւատացէք մարգարէից նորա, եւ յա-
21 ջողեսցի ձեզ։ Եւ խորհեցաւ ընդ ժո-
ղովրդեանն. եւ կացոյց սաղմոսնուագս[2]
եւ օրհնիչս՝ [3]խոստովան լինել եւ օրհ-
նել զսրբութիւնս՝՝ յելանելն առաջի
զօրուն. եւ ասէին, Խոստովան եղի-
րուք Տեառն, զի յաւիտեան է ողոր-
մութիւն նորա։
22 Եւ եղեւ ի սկսանելն զօրհնութիւնս
Տեառն եւ զխոստովանութիւնս նորա,
ետ Տէր [4]պատերազմել որդւոցն Ամո-
նայ, ի վերայ Մովաբու եւ լերինն Սէի-
րայ, որք ելեալ էին ի վերայ Յուդայ.
23 եւ պարտեցան։ Եւ յարեան որդիքն Ա-
մոնայ եւ Մովաբու ի վերայ բնակչաց
լերինն Սէիրայ սատակել եւ խորտակել.
եւ իբրեւ վախճանեցին զբնակիչսն Սէի-
րայ, յարեան ի վերայ միմեանց սա-
24 տակել։ Եւ Յուդաս եկն ի դիտանոցն
անապատին, հայեցաւ եւ ետես զբազ-
մութիւնն, եւ ահա ամենեքեան մե-
ռեալք եւ անկեալք ի վերայ երկրի, եւ
25 ոչ ոք էր ապրեալ։ Եւ եկն Յովսափատ
եւ զօրն կողոպտել զաւարն նոցա, եւ
գտին [5]անասուն բազում եւ զկազմածն
եւ զաւարն՝՝ եւ անօթս ցանկալիս, եւ
աւարեցին [6]զայն. եւ եղեւ զերիս աւուրս
ժողովել նոցա զաւարն, վասն զի բա-
զում էր յոյժ։
26 Եւ յաւուրն չորրորդի ժողովեցան ի
Հովիտն օրհնութեան. վասն զի անդ
օրհնեցին զՏէր, յաղագս այնորիկ կո-
չեցին զանուն տեղւոյն այնորիկ՝ Հովիտ
27 օրհնութեան մինչեւ յօրս յայս։ Եւ դար-
ձաւ ամենայն այր Յուդայ [7]յԵրուսա-
ղէմ, եւ Յովսափատ առաջնորդ նոցա
ուրախութեամբ [8]մեծաւ. քանզի ուրախ
արար զնոսա Տէր ի թշնամեացն իւ-
28 րեանց. Եւ մտին յԵրուսաղէմ քնարօք
եւ տաւղօք եւ փողովք ի տուն Տեառն։
29 Եւ եղեն արհաւիրք [9]ի Տեառնէ ի վերայ
ամենայն թագաւորութեանց երկրի ի

[1] Եբր. ձերում [2] Եբրայեցին յաւելու, Տեառն
[3] Եբր. ի վայելչութիւն սրբութեանն [4] Եբր. դա-
րանակալս ի վերայ [5] Եբր. ի նոսա բազմութեամբ
կազմածս եւ հանդերձս [6] Եբր. զայն մինչեւ
չկարել բառնալ [7] Եբր. և Երուսաղեմի [8] Եբր.
յԵրուսաղէմ [9] Եբր. Աստուծոյ

լսելն նոցա եթէ Տէր ետ պատերազմ
30 ընդ հակառակորդսն Իսրայելի։ Եւ խա-
ղաղեցաւ թագաւորութիւնն Յովսափա-
տու, եւ հանգոյց զնա Աստուած նորա
շուրջանակի։
31 Եւ թագաւորեաց Յովսափատ ի վե-
րայ Յուդայ. եւ էր ամաց [10]երեսնից ի
թագաւորելն իւրում, եւ քսան եւ հինգ
ամ թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ ա-
նուն մօրն նորա Ազուբա՝ դուստր Սա-
32 ղեայ։ Եւ գնաց ի ճանապարհս հօր իւ-
րոյ Ասայի, ոչ [11]խոտորեցաւ առնել ուղ-
33 ղութիւն առաջի Տեառն, Այլ բարձունքն
սակաւին եւս էին, եւ ժողովուրդն ոչ
ուղղեաց զսիրտ իւր առ Տէր Աստուած
34 հարցն իւրեանց։ Եւ մնացեալ բանքն
Յովսափատու առաջինք եւ վերջինք՝
ահա գրեալ են ի բանս Յէուայ որդւոյ
Անանեայ, [12]որ գրեաց զգիրս՝՝ թագաւո-
րացն Իսրայելի։
35 Եւ յետ այսորիկ հաղորդութիւն ա-
րար Յովսափատ արքայ Յուդայ ընդ Ո-
36 քոզեայ արքայի Իսրայելի. [13]Եւ անօրի-
նեցաւ նա յառնել եւ երթալ առ նա,
եւ առնել նաւ՝՝ գնալ ի Թարսիս. եւ [14]ա-
37 րար նաւ ի Գասիոնգաբեր։ Եւ մարգա-
րէացաւ Եղիազար որդի Ովդիայ ի Մա-
րեսայ առ Յովսափատ, եւ ասէ, Վասն
զի եղեր սիրելի Ոքոզեայ, խորտակեաց
Տէր զգործս քո. եւ [15]խորտակեցաւ նաւն
քո եւ ոչ կարաց՝՝ երթալ ի Թարսիս։

## ԳԼ. ԻԱ

1 Եւ ննջեաց Յովսափատ ընդ հարս իւր,
եւ թաղեցաւ ընդ հարս իւր ի քաղաքի
Դաւթի. եւ թագաւորեաց Յովրամ որ-
2 դի նորա փոխանակ նորա։ Եւ նորա էին
եղբարք՝ որդիք Յովսափատու վեց, Ազա-
րիա եւ Յեքիէլ եւ Զաքարիաս եւ [16]Միքայէլ
եւ Սափատիաս եւ Ազարիու, ամենեքեան
սոքա որդիք Յովսափատու արքայի Յու-
3 դայ։ Եւ ետ նոցա հայրն իւրեանց պարգեւս
բազումս, արծաթ եւ ոսկի եւ [17]զէնս, հան-
դերձ պարսպաւոր քաղաքօքն Յուդայ.
եւ զթագաւորութիւնն ետ Յովրամայ,
4 վասն զի նա էր անդրանիկ։ Եւ յարեաւ
Յովրամ ի թագաւորութեանն իւրում եւ

[10] Եբր. երեսուն եւ հնգից [11] Եբր. խոտորեցաւ ի
նմանէ [12] Եբր. որ գրեալ են ի գիրս [13] Եբր. նա
արար չար։ (36) Եւ յարեցաւ ի նա առնել նաւս
[14] Եբր. արարին [15] Եբր. խորտակեցան նաւքն և
ոչ կարացին [16] Եբր. Միքայէլ [17] Եբր. ընծայս

զօրացաւ , եւ սպան զամենեսեան զեղ-
բարսն իւր սրով , եւ յիշխանացն Իս-
րայելի ։
5 Էր ութն երեսուն եւ երկուց ամաց
յորժամ եկաց ի թագաւորութեանն իւ-
րում , եւ զութ ամ թագաւորեաց յԵ-
6 րուսաղէմ ։ Եւ գնաց ի ճանապարհս թա-
գաւորացն Իսրայելի , որպէս արար տունն
Աքաաբու . վասն զի դուստր Աքաաբու
էր նորա կին , եւ արար չար առաջի
7 Տեառն ։ Եւ ոչ կամեցաւ Տէր սատակել
զտունն Դաւթի վասն ուխտին զոր եդ
ընդ Դաւթի . եւ որպէս ասացն տա՛
տալ նմա ճրագ եւ որդւոց նորա զա-
մենայն աւուրս ։
8 Յաւուրսն յայնոսիկ ապստամբեաց Ե-
դովմ ի Յուդայ , եւ թագաւորեցուցին ի
9 վերայ իւրեանց թագաւոր ։ Եւ գնաց
Յովրամ հանդերձ իշխանօքն , եւ ամե-
նայն երիվարք ընդ նմա . եւ եղեւ ի
յառնելն նորա զգիշերի, եհար [1]Եդովմ զպա-
տեալսն" որ պատեցին զնա , եւ զիշխանս
կառացն . [2]եւ փախեաւ զօրն ի բնակու-
10 թիւնս իւրեանց" Եւ ի բաց եկաց Եդովմ ի
ձեռանէ Յուդայ մինչեւ յօրս յայս . յայն-
ժամ ապստամբեաց Ղոբնա ի ձեռանէ
նորա ի ժամանակին յայնմիկ . վասն զի
[3]թողին զՏէր Աստուած հարցն իւրեանց" ։
11 Քանզի արար իւր բարձունս ի քաղաքսն
Յուդայ , եւ պոռնկեցոյց զբնակիչսն Ե-
րուսաղեմի , եւ մոլորեցոյց զՅուդայ ։
12 Եւ եկն նմա գիր յԵղիայէ մարգարէէ ,
եւ ասէ , Այսպէս ասէ Տէր Աստուած
Դաւթի հօր քո . Փոխանակ զի ոչ գնա-
ցեր դու ի ճանապարհս Յովսափատու
հօր քո , եւ ոչ ի ճանապարհս Ասայի
13 արքայի Յուդայ , Այլ գնացեր ի ճանա-
պարհս թագաւորացն Իսրայելի , եւ
պոռնկեցուցեր զՅուդա եւ զբնակիչսն
Երուսաղեմի , որպէս պոռնկեցաւ տունն
Աքաաբու , եւ զեղբարս քո զորդիս հօր
քո , զլաւագոյնսն քան զքեզ , սպաներ ,
14 Եւ ահա Տէր հարցէ զքեզ հարուածովք
մեծօք ի ժողովրդեան քում , եւ զորդիս
քո եւ զկանայս քո եւ զամենայն ստա-
15 ցուածս քո . Եւ դու չար հիւանդութեամբ
եւ ախտիւ որովայնի հաշեսցիս , մինչեւ
ելցէ որովայն քո հիւանդութեամբն հան-
դերձ՝ աւուրց յաւուրս ։
16 Եւ յարոյց Տէր ի վերայ Յովրամայ
այլազգիս , եւ զԱրաբացիս զմերձաւորսն
17 Եթեովպացւոց . Եւ ելին ի վերայ Յու-
դայ եւ հարստահարէին զնա . եւ գար-
ձուցին զամենայն պատրաստութիւնն
զոր գտին ի տան արքային , եւ զուս-
տերս նորա եւ [4]զդստերս նորա . եւ ոչ
մնաց նմա որդի , բայց Ոքոզիաս միայն՝
կրտսերագոյն յորդիս նորա ։
18 Եւ յետ այսր ամենայնի եհար զնա
Տէր ախտիւ որովայնի որոյ ոչ գոյր
19 բժշկութիւն ։ Եւ եղեւ աւուրց յաւուրս ,
[5]իբրեւ եկն ժամանակ աւուրցն նորա ,
յերկուս աւուրս ել որովայն նորա հան-
դերձ ախտիւն", եւ մեռաւ ի չար հի-
ւանդութեանն յայնմիկ . եւ ոչ արար
նմա ժողովուրդն [6]յուղարկութիւն , իբ-
րեւ զյուղարկաւորութիւն հարցն նորա ։
20 Էր ամաց երեսուն եւ երկուց յորժամ
թագաւորեաց , եւ զութ ամ թագաւո-
րեաց յԵրուսաղէմ . եւ մեռաւ ոչ գովու-
թեամբ , եւ թաղեցաւ ի քաղաքին Դաւ-
թի , եւ ոչ ի գերեզմանս թագաւորացն ։

## ԳԼ . ԻԲ

1 Եւ թագաւորեցուցին բնակիչքն Երու-
սաղեմի զՈքոզիաս որդի նորա զկրտսե-
րագոյնն փոխանակ նորա . վասն զի զա-
մենեսեան զերիցագոյնսն կոտորեաց հէնն
եկեալ ի վերայ նոցա , [7]Արաբացիքն եւ
Ազիմազոնեայքն". եւ թագաւորեաց Ո-
քոզիա որդի Յովրամայ արքայի Յու-
2 դայ ։ Էր [8]քսան եւ երկուց ամաց յոր-
ժամ թագաւորեաց Ոքոզիա , եւ տարի
մի թագաւորեաց յԵրուսաղէմ . եւ ա-
նուն մօր նորա Գոթողիա դուստր Ամ-
3 րեայ ։ Եւ նա գնաց ի ճանապարհս տանն
Աքաաբու . վասն զի մայրն իւր էր
4 խորհրդակից նմա մեղանչել ։ Եւ արար
չար առաջի Տեառն որպէս արար տունն
Աքաաբու . քանզի նոքա էին խորհրդա-
կիցք նմա յետ մեռանելոյ հօրն նորա
5 սատակել զնա ։ Ըստ խորհրդոցն նոցա
գնաց նա , եւ չոգաւ ընդ Յովրամայ
որդւոյ [9]Աքաաբու ի պատերազմ ի վե-
րայ Ազայելի արքայի Ասորեաց յՌամովթ
Գաղաադ . եւ հարին [10]աղեղնաւորքն
6 զՅովրամ ։ Եւ դարձաւ Յովրամ բժշկել
յԵզրայէլ ի վիրացն զոր խոցեցին զնա

[1] Ոմն. զԵդովմ [2] Ոմն. [illegible] [3] Ոմն. եթող զՏէր Աստուած հարցն իւրոց

[4] Ոմն. զկանայս [5] Ոմն. իբրեւ եկն ժամանակ փոխճանի աւուրց ամաց երկուց , վայթեցան աղիք նորա յախտէն [6] Ոմն. այրումն [7] Ոմն. ընդ Արաբացիս ի բանակն [8] Ոմն. քառասուն [9] Ոմն. Աքաաբու, արքայի Իսրայելի [10] Ոմն. Ասորիք

Ասորիքն յՌամաթ՝ ի պատերազմել նո-
րա ընդ Ազայելի արքայի Ասորւոց. եւ
Ոքոզիաս որդի Յովրամայ արքայի Յու-
դայ՝ էջ տեսանել զՅովրամ որդին Ա-
քաաբու յԵզրայէլ, վասն զի հիւանդ էր։
7 Եւ ի Տեառնէ եղեւ կործանումն Ոքո-
զեայ յերթալն առ Յովրամ. եւ յեր-
թալն նորա ել [1]նա առ Յէու՝ որդին Ա-
8 մեսսեայ օծեալն Տեառն։ Եւ եղեւ ի-
րեւ ած Յէու զվրէժ տանն Աքաաբու,
եգիտ եւ զիշխանսն Յուդայ եւ զեղ-
բարսն Ոքոզեայ որք պաշտէին զՈքո-
9 զիաս, եւ կոտորեաց զնոսա. Եւ [2]ասաց
խնդրել զՈքոզիաս. եւ կալան զնա ի
բժշկելն" ի Սամարիա, եւ ածին զնա առ
Յէու, եւ [3]սպան զնա, եւ թաղեցին
զնա անդէն. վասն զի ասացին, Որդի
է Յովսափատայ որ խնդրեաց զՏէր ի
բոլոր սրտէ իւրմէ. եւ ոչ գոյր ի տանն
Ոքոզեայ՝ [4]զօրացուցանել զոք յաղագս
զօրութեան թագաւորութեանն"։
10 Եւ Գոթողիա մայրն Ոքոզեայ եtes
թէ մեռաւ որդին նորա, յարեաւ եւ
կորոյս զամենայն զաւակ թագաւորու-
11 թեանն ի տանն Յուդայ։ Եւ առ Յով-
սաբէթ դուստր արքայի զՅովաս որդի
Ոքոզեայ, եւ գողացաւ զնա ի միջոյ
որդւոցն արքայի կոտորելոցն. եւ ետ
զնա եւ զդայեակ նորա ի սենեակս ան-
կողնացն, եւ թաքոյց զնա Յովսաբէթ
դուստր արքային Յովրամայ՝ քոյրն Ո-
քոզեայ, կին Յովիդայեայ քահանայի,
եւ ծածկեաց զնա յերեսաց Գոթողեայ,
12 եւ ոչ սպան զնա։ Եւ էր ընդ նմա թա-
քուցեալ ի տանն Աստուծոյ ամս վեց. եւ
Գոթողիա թագաւորեաց ի վերայ երկրին։

## ԳԼ. ԻԳ

1 Եւ յամին եւթներորդի զօրացաւ Յո-
վիդայէ, առ զհարիւրապետսն՝ զԱ-
զարիաս որդի Յովրամայ, եւ զԻսմա-
յէլ որդի Յովնանայ, եւ զԱզարիաս որ-
դի Յովբադայ, եւ զՄաասիա որդի Ա-
դայեայ, եւ զԵղիսափատ որդի Զաքա-
2 րեայ [5]ի տունն Տեառն։ Շրջեցան" ընդ
Յուդաս, եւ ժողովեցին զՂեւտացիսն
յամենայն քաղաքացն Յուդայ, եւ զիշ-
խանս տոհմիցն Իսրայէլի, եւ եկին յԵ-
3 րուսաղէմ։ Եւ եդին ուխտ [6]ընդ ամե-
նայն եկեղեցւոյն Յուդայ ի տանն Տեառն
եւ ընդ արքային. եւ եցոյց նոցա զոր-
դին արքայի, եւ" ասէ ցնոսա, Ահաւա-
սիկ որդի արքային Յուդայ, թագա-
ւորեսցէ դա, որպէս խօսեցաւ Տէր ի
4 վերայ տանն Դաւթի։ Եւ արդ բան այս
է զոր առնիցէք. երրորդ մասն ի ձէնջ
մտցէ ի շաբաթամուտ քահանայիցն եւ
5 Ղեւտացւոց ի մուտս դրանցն, Եւ եր-
րորդ մասն ի տան արքային, եւ եր-
րորդն ի դրանն [7]միջնում, եւ ամենայն
ժողովուրդն [8]ի սրահի տանն Տեառն լի-
6 ցի. Եւ մի՛ ոք մտցէ ի տունն Տեառն,
բայց միայն քահանայքն [9]եւ Ղեւտա-
ցիքն" եւ պաշտօնեայքն ի Ղեւտացւոց՝
նոքա մտցեն, վասն զի սուրբ են. եւ
ամենայն ժողովուրդն պահեսցէ զպահ-
7 պանութիւնս Տեառն։ Եւ պատեսցեն
Ղեւտացիքն շուրջանակի զարքայ՝ այր
եւ զէն իւր ի ձեռին իւրում. եւ որ ոք
մտանիցէ ի տունն, մեռցի. եւ [10]նոքա
եղիցին" ընդ արքայի ի մտանել եւ յե-
8 լանել նորա։ Եւ արարին Ղեւտացիքն
եւ ամենայն Յուդա ըստ ամենայնի զոր
ինչ պատուիրեաց Յովիդայէ քահա-
նայ. եւ առ իւրաքանչիւր ոք զընկեր
իւր [11]ի սկսանելոյ շաբաթուն". վասն զի
ոչ արձակեաց Յովիդայէ զհանապազոր-
9 դեան պահապանսն։ Եւ ետ [12]նոցա զսու-
սերսն եւ զվահանսն եւ զզէնսն" որք
էին արքայի Դաւթի ի տանն Աստուծոյ.
10 Եւ կացոյց զամենայն ժողովուրդն՝ զիւ-
րաքանչիւր ոք զինուն իւրով՝ յուսոյ
տանն յաջմէ, մինչեւ յուս ահեկի կող-
մանն սեղանոյն եւ տաճարին զթագա-
11 ւորաւն շուրջանակի։ Եւ եհան զորդին
արքայի, եւ եդ ի վերայ նորա զթագն
եւ զվկայութիւնն. եւ թագաւորեցու-
ցին եւ օծին զնա Յովիդայէ եւ որդիք
իւր, եւ ասեն, Կեցցէ արքայ։
12 Եւ լուաւ Գոթողիա զձայն ժողովր-
դեանն զընթանալոյն, զգոհանալոյն եւ
զօրհնելոյն զարքայ, եւ եմուտ [13]առ ար-
13 քայն" ի տունն Տեառն. Ետես, եւ ահա
թագաւորն կայր ի սեղւոջն իւրում, ի

[1] Եբր. նա ընդ Յովրամայ [2] Եբր. խնդրեաց զՈքոզիաս. և կալան զնա որ թաքուցեալ էր [3] Եբր. սպանին [4] Եբր. զօրութիւն ունել զթագաւորութիւնն [5] Եբր. ընդ իւր յուխտին։ (2)Եւ շրջեցան

[6] Եբր. ամենայն եկեղեցին ի տանն Աստուծոյ ընդ արքային. եւ Յովիդայէ [7] Եբր. հիմանն [8] Եբր. ի գաւիթս [9] Յնբր. պակաս [10] Եբր. եղիջիք [11] Եբր. եթէ զորս գային ի շաբաթ անդր, և եթէ զորս ելանէին ի շաբաթէն [12] Եբր. Յովիդայէ քահանայ հարիւրապետացն զնիզակս և զասպարս եւ զվահանս [13] Եբր. առ ժողովուրդն

մուտս ճանապարհին, սկտաքն եւ փողքն
[1]եւ իշխանքն" շուրջ զարքայիւ. եւ ա-
մենայն ժողովուրդն զուարճացեալ հար-
կանէին զփողսն, եւ երգէին նուագա-
րանօքն երգս, եւ օրհնէին զօրհնու-
թիւնս. եւ պատառեաց Գոթողիա
զզգեստն իւր, [2]գոչեաց եւ ասէ, Դա-
14 ւաճանութեամբ խարդախեցէք։ Եւ ել
Յովիդայէ քահանայ, պատուիրեաց Յո-
վիդայէ քահանայ հարիւրապետացն եւ
իշխանաց զօրուն, եւ ասէ ցնոսա, Հա-
նէք զդա արտաքոյ ի տանէդ, եւ ելէք"
զկնի դորա, մեռցի սրով. վասն զի ա-
սաց քահանայն, Մի՛ մեռցի նա ի տանն
15 Տեառն։ Եւ [3]թոյլ ետուն նմա", եւ անց
ընդ դուռն հեծելոց տան արքային, եւ
սպանին զնա անդ։
16 Եւ ուխտեաց Յովիդայէ ուխտ ի մէջ
իւր եւ ժողովրդեանն եւ արքային, լի-
17 նել ժողովուրդ Տեառն։ Եւ եմուտ ա-
մենայն ժողովուրդ երկրին ի տունն Բա-
հաղու, եւ կործանեցին զնա եւ զսե-
ղանս նորա, եւ զկուռս նորա մանր-
եցին, եւ զՄաթան քուրմն Բահաղու
18 սպանին առաջի սեղանոյ նորին։ Եւ [4]ած
Յովիդայէ քահանայ զգործ տանն ի ձեռն
քահանայից Ղեւտացւոց. եւ կանգնեաց
զհանապազորդեան պաշտօնեայս՝ զքա-
հանայս եւ զՂեւտացիս զորս դասոյց
Դաւիթ՝ ի տունն Տեառն, եւ մատոյց"
ողջակէզս Տեառն, որպէս եւ գրեալ է
յօրէնսն Մովսիսի, ուրախութեամբ եւ
19 երգովք ի ձեռն Դաւթի։ Եւ [5]կացին
դռնապանքն" ի դրունս տան Տեառն, եւ
ոչ մտանէր անմաքուր ոք անդր յամե-
20 նայն իրս։ Եւ առ զպետս տասնից եւ
զզօրաւորսն եւ զիշխանս ժողովրդեանն,
եւ զամենայն ժողովուրդ երկրին, եւ
[6]հանին զարքայ ի տանէ Տեառն, եւ
մտին ընդ դուռն [7]ներքին ի տունն Թա-
գաւորին, եւ նստուցին զարքայ յաթոռ
21 թագաւորութեանն. Եւ ուրախ եղեւ ա-
մենայն ժողովուրդ երկրին, եւ քաղաքն
լռեաց. եւ զԳոթողիա սպանին սրով։

[1] Յեբր. պակաս [2] Եբր. եւ ասէ. Դաւաճանութի՜ւն, դաւաճանութի՜ւն։ (14) Եւ եհան Յովիդայէ քահանայ զհարիւրապետս, զիշխանս զօրուն, եւ ասէ ցնոսա, Հանէք զդա ի միջոյ կարգացդ եւ որ եկանէ [3] Եբր. արկին ի նա ձեռս [4] Եբր. կացոյց Յովիդայէ պաշտօնեայս ի տան Տեառն ի ձեռն քահանայից Ղեւտացւոց զորս դասոյց Դաւիթ ի տանն Տեառն մատուցանել [5] Եբր. կացոյց դռնապանս [6] Եբր. իջոյց [7] Եբր. բարձր

## Գլ. ԻԴ

1 Էր եւթն ամաց Յովաս ի թագաւորելն
իւրում, եւ քառասուն ամ թագաւո-
րեաց յԵրուսաղէմ. եւ անուն մօր նո-
2 րա Սաբիա ի Բերսաբէէ։ Եւ արար Յո-
վաս ուղղութիւն առաջի Տեառն զամե-
նայն աւուրս Յովիդայեայ քահանայի։
3 Եւ ա՛ռ իւր Յովաս երկուս կանայս, եւ
ծնաւ ուստերս եւ դստերս։
4 Եւ յետ այսորիկ եղեւ ի սրտին Յո-
5 վասու կազմել զտունն Տեառն։ Եւ ժո-
ղովեաց զքահանայսն եւ զՂեւտացիսն,
եւ ասէ ցնոսա, Ելէք ի քաղաքս Յու-
դայ, եւ ժողովեցէք յամենայն Իսրա-
յելէ արծաթ, զօրացուցանել զտունն
Տեառն ամի ամի. եւ փութապարուք
[8]խօսել. եւ ոչ հաւատացին" Ղեւտա-
6 ցիքն։ Եւ կոչեաց Յովաս արքայ զՅո-
վիդայէ զիշխան, եւ ասէ ցնա, Ընդէ՞ր
ոչ արարեր այց Ղեւտացւոցն, բերել ի
ներքս ի Յուդայ եւ յԵրուսաղեմէ որ ինչ
առհմանեալ էր ի Մովսիսէ [9]յառնէն Աս-
տուծոյ. վասն զի եկեղեցացոյց զԻս-
7 րայէլ ի խորանն" վկայութեան։ Զի Գո-
թողիա էր անօրէն, եւ որդիք նորա
կործանեցին զտունն Աստուծոյ. [10]քան-
զի եւ" զսրբութիւնս տանն Աստուծոյ
8 արարին Բահաղիմացն։ Եւ ասէ արքայ,
Լիցի արկղ, եւ դիցի ի դրան տանն Տեառն
9 արտաքոյ. Եւ քարոզեսցեն ի Յուդա եւ
յԵրուսաղէմ, բերել Տեառն, որպէս ա-
սաց Մովսէս ծառայն Աստուծոյ Իսրա-
10 յէլի յանապատին։ Եւ [11]ետուն ամենե-
քեան" իշխանքն եւ ամենայն ժողո-
վուրդն, եւ բերէին ի ներքս եւ արկա-
11 նէին յարկղն մինչեւ լցաւ։ Եւ լինէր
իբրեւ բերէին զարկղն առ վերակացուս
արքային ի ձեռն Ղեւտացւոցն, իբրեւ
տեսանէին թէ առաւելոյր արծաթն,
գայր դպրապետն արքային եւ վերակա-
ցու մեծի քահանային, եւ թափէին
զարկղն, եւ կացուցանէին անդրէն ի
տեղւոջն իւրում. այնպէս առնէին օր
ըստ օրէ, եւ ժողովէին արծաթ բա-
12 զում։ Եւ ետ զայն արքայ եւ Յովիդայէ
քահանայ ցայնոսիկ որք առնէին զգործն
ի պատրաստութիւն տանն Տեառն. եւ

[8] Եբր. ի գործն. եւ ոչ փութացան [9] Եբր. ծառայէ Տեառն եւ ի ժողովրդենէն Իսրայելի վասն խորանին [10] Եբր. նա եւ [11] Եբր. ուրախ եղեն ամենայն

կացուցին ի վարձու քարահատս եւ հիւ-
13 սունս կազմել զտունն [1]Տեառն։ Եւ առ-
նէին զգործն, եւ ելանէր յաջողութիւն
գործոյն ի ձեռս նոցա. եւ կանգնեցին
զտունն [2]Տեառն ի կայանին իւրում, եւ
14 զօրացուցին զնա։ Եւ իբրեւ կատարե-
ցին, բերին առ արքայ եւ առ Յովի-
դայէ զմնացեալ արծաթն. եւ արարին
սպաս ի տանն Տեառն, կահ պաշտաման
ողջակիզացն, եւ խնկարանս ոսկեղէնս եւ
արծաթեղէնս. եւ մատուցանէին ողջա-
կէզս ի տան Տեառն հանապազ զամե-
նայն աւուրս Յովիդայեայ։
15 Եւ ծերացաւ Յովիդայէ լի աւուրբք,
եւ վախճանեցաւ ամաց հարեւր եւ ե-
16 րեսնից։ Եւ ի վախճանել նորա թաղե-
ցին զնա ի քաղաքի Դաւթի ընդ թա-
գաւորս. վասն զի արար բարութիւնս
ընդ Իսրայելի, եւ ընդ Աստուծոյ եւ
ընդ տան նորա։
17 Եւ եղեւ յետ վախճանելոյն Յովիդայ-
եայ՝ մտին իշխանքն Յուդայ եւ երկիր
պագին արքայի, [3]եւ չրջեցին զմիտս
Յովասու". յայնժամ լուաւ նոցա ար-
18 քայ։ Թողին [4]զՏէր Աստուած" հարցն
իւրեանց, եւ ծառայեցին կռոց եւ Աս-
տարտոյցն. եւ եղեւ բարկութիւն Տեառն
ի վերայ Յուդայ եւ Երուսաղեմի [5]յա-
19 ւուրն յայնմիկ"։ Եւ առաքեաց առ նո-
սա մարգարէս՝ դարձուցանել առ Տէր,
[3]եւ ոչ լուան". եւ եդ նոցա վկայութիւն,
եւ ոչ անսացին։
20 Եւ Հոգի [6]Տեառն զգեցաւ Ազարիաս
որդի" Յովիդայեայ քահանայի, յարեաւ
ի մէջ [3]ամենայն ժողովրդեանն եւ ասէ,
Այսպէս ասէ [7]Տէր. Ընդէ՞ր խոտորեցայք
ի պատուիրանացն Տեառն, եւ ոչ յա-
ջողեսջի ձեզ. վասն զի թողէք դուք
21 զՏէր, եւ նա լքցէ զձեզ։ Եւ յարեան ի վե-
րայ նորա եւ քարկոծեցին զնա պատուի-
րանաւ Յովասու արքայի [8]ի սրահի տանն
22 Տեառն։ Եւ ոչ յիշեաց [9]Յովաս զգութն զոր
արար ընդ նմա Յովիդայէ հայրն նորա,
եւ սպան զորդի նորա. եւ եղեւ ի մեռա-
նելն՝ ասաց, Տեսցէ Տէր եւ դատեսցի։
23 Եւ ի կատարել տարւոյն այնորիկ ել ի
վերայ նորա զօրն Ասորւոց, եւ եկն ի
վերայ Յուդայ եւ Երուսաղեմի, եւ կո-
տորեցին զամենայն իշխանս ժողովըր-
դեանն ի զօրուն, եւ զամենայն աւար
նոցա տարան առ արքայն Դամաս-
24 կոսի. Վասն զի սակաւ արամբք եկն
զօրն Ասորւոց, եւ [10]Աստուած մատնեաց
ի ձեռս նոցա զօր բազում յոյժ, վասն
թողլոյն նոցա զՏէր Աստուած հարցն
իւրեանց, եւ ընդ Յովասայ արար զդա-
25 տաստանն։ Եւ յետ գնալոյն նոցա ի
նմանէ, թողին զնա ի հիւանդութեան
մեծի. եւ յարեան ի վերայ նորա ծա-
ռայքն իւր, վասն արեան [11]որդւոյն Յո-
վիդայեայ քահանայի, եւ սպանին զնա
ի գահոյսն իւրում եւ մեռաւ. եւ թա-
ղեցին զնա ի քաղաքին Դաւթի, եւ ոչ
թաղեցին զնա ի գերեզմանի թագաւո-
26 րացն։ Եւ որք յարեանն ի վերայ նորա՝
էին Զաբդեա որդի Սամաթայ Ամոնա-
ցի, եւ Յովազաբեթ որդի Սամարիթայ
27 Մովաբացի։ [12]Եւ որդիք նորա ամենե-
քեան. եւ եկին առ նա հնգեքեան, եւ
բազում մթերս ի վերայ դնէին։ Եւ մնա-
ցեալ բանքն Յովասու՝ ահա գրեալ են ի
գիրս թագաւորացն"։ Եւ թագաւորեաց
Ամասիա որդի նորա փոխանակ նորա։

ԳԼ. ԻԵ

1 Էր ամաց քսան եւ հնգից ի թագաւո-
րելն Ամասիայ, եւ քսան եւ ինն ամ
թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ անուն
2 մօր նորա Յովադին յԵրուսաղեմէ։ Եւ
արար ուղղութիւն առաջի Տեառն, բայց
ոչ լի սրտիւ։
3 Եւ եղեւ իբրեւ հաստատեցաւ թա-
գաւորութիւնն ի ձեռին նորա, սպան
զծառայսն իւր որք սպանին զարքայ
4 զհայրն նորա. Եւ զորդիսն նոցա ոչ սպան՝
ըստ ուխտի օրինացն Տեառն, որպէս եւ
գրեալ է եւ զոր օրինակ պատուիրեաց
Տէր եւ ասաց, Ոչ մեռցին հարք փո-
խանակ որդւոց, եւ որդիք ոչ մեռցին
փոխանակ հարց իւրեանց, այլ իւրա-
քանչիւր ոք ի մեղս իւրում մեռցի։
5 Եւ ժողովեաց Ամասիա [13]զտունն Յու-
դայ", եւ կացոյց նոցա ըստ տանց տոհ-
միցն իւրեանց հազարապետս եւ հարիւ-

[1]Եբր. Տեառն. եւ գործեին երկաթոյ եւ պղնձոյ ի զօրացուցանել զտունն Տեառն [2]Եբր. Աստուծոյ [3]Եբր. պակաս [4]Եբր. զտունն Տեառն Աստուծոյ [5]Եբր. վասն այսր յանցուածոյ նոցա [6]Եբր. Աստուծոյ եկից զԶաքարիա զորդի [7]Եբր. Աստուած [8]Եբր. ի գաւիթի [9]Եբր. Յովաս արքայ

[10]Եբր. Տէր [11]Եբր. որդւոցն [12]Եբր. Իսկ որդիք նորա, և յաճախութիւն հարկացն որ առ նովաւ եւ նորոգութիւնն տանն Աստուծոյ. ահա գրեալ են ի յիշատակարանս գրոց թագաւորաց [13]Եբր. զՅուդա

բազմեաց յամենայն Յուդա եւ [1]յԵրու-
սաղէմ. եւ թուեաց զնոսա ի քսանա-
մենից եւ ի վեր, եւ եգիտ զնոսա երեք-
հարեւր հազար զօրաւորս, որք ելանէին
ի պատերազմ ունելով նիզակ եւ աս-
6 պար։ Եւ ի վարձու կալաւ յԻսրայէլէ
հարեւր հազար զօրաւորս ուժով՝ հա-
7 րեւր տաղանդոյ արծաթոյ։ Եւ այր մի
Աստուծոյ եկն առ նա եւ ասէ, Արքայ, մի
երթիցէ ընդ քեզ զօրդ Իսրայէլի, վասն
զի ոչ է Տէր ընդ Իսրայէլի, եւ ոչ ընդ
8 ամենայն որդիս Եփրեմի. [2]Եթէ կար-
ծեսցես զօրանալ դոքօք,՝՝ ի պարտու-
թիւն մատնեսցէ զքեզ [3]Տէր առաջի
թշնամեաց քոց. քանզի [4]ի Տեառնէ լի-
նի զօրանալ եւ ի պարտութիւն մատ-
9 նել։ Եւ ասէ Ամասիա ցայրն Աստու-
ծոյ, Եւ զի՞նչ արարից զհարեւր տա-
ղանդսն զոր ետու զօրուդ Իսրայէլի.
եւ ասէ ցնա այրն Աստուծոյ, Գոյ Տեառն
10 տալ քեզ առաւելագոյն քան զայն։ Եւ
որոշեաց Ամասիա զգունդն որ եկեալ
էր առ նա յԵփրեմայ՝ երթալ ի տեղի
իւրեանց. եւ բարկացաւ յոյժ ի վերայ
Յուդայ, եւ դարձան ի տեղիս իւրեանց
բարկութեամբ եւ ցասմամբ։
11 Եւ Ամասիա զօրացաւ, առ զզօրն
իւր եւ գնաց ի Հովիտս աղտիցն. եւ ե-
12 հար զորդիսն Սէիրայ տասն հազար. Եւ
այլ եւս տասն հազար գերեցին որդիքն
Յուդայ, եւ ածին զնոսա ի գլուխ քա-
րանձաւին եւ գահավէժ առնէին զնոսա
ի ծայրից բարձաւանդակին, եւ ամենե-
քեան սատակէին։
13 Եւ որդիք զօրութեանցն զորս դար-
ձոյց Ամասիա ոչ երթալ ընդ իւր ի պա-
տերազմ՝ յարձակեցան ի քաղաքսն Յու-
դայ, ի Սամարիայ մինչեւ ի Բեթորոն,
եւ հարին ի նոցանէ երիս հազարս, եւ
առին աւար բազում։
14 Եւ եղեւ յետ գալոյն Ամասիայ ի հար-
կանելոյն զԵդովմ, եբեր [5]առ նոսա՝՝ զաս-
տուածս որդւոցն Սէիրայ, եւ կացոյց
զնոսա իւր յաստուածս, եւ երկիր պա-
գանէր առաջի նոցա, եւ [6]զոհէր ինքն՝՝
15 նոցա։ Եւ եղեւ բարկութիւն Տեառն ի
վերայ Ամասիայ. առաքեաց առ նա մար-
գարէ եւ ասէ ցնա, Ընդէ՞ր խնդրեցեր
զաստուածս ժողովրդեանն այնո-
րիկ, որք ոչ փրկեցին զժողովուրդն իւ-
16 րեանց ի ձեռաց քոց։ Եւ եղեւ ի խօսելն
նորա ասէ ցնա, Միթէ խորհրդակի՞ց թա-
գաւորի եդուն զքեզ. զգոյշ լեր՝ զուցէ
տանջեսցիս. եւ լռեաց մարգարէն, եւ
ասէ, Գիտեմ զի խորհի Տէր ի վերայ քո
եղծանել զքեզ. վասն զի արարեր զայդ,
եւ ոչ անսացեր խրատու իմում։
17 Եւ խորհեցաւ Ամասիա, առաքեաց
առ Յովաս որդի Յովաքազայ որդւոյ
Յէուայ՝ առ արքայն Իսրայէլի, եւ ա-
18 սէ, Եկ եւ երեւեսցուք երեսօք։ Եւ ա-
ռաքեաց Յովաս արքայ Իսրայէլի առ
Ամասիա արքայ Յուդայ եւ ասէ, Ո-
քողն որ ի Լիբանան է՝ յղեաց առ մայրն
Լիբանանու եւ ասէ, Տուր զդուստր քո
ուստեր իմում կնութեան. եւ ահա ան-
ցին գազանք անապատին Լիբանանու,
եւ եկեալ կոխեցին զամենայն զեկքան։
19 [7]Ահա հարեր զԻդումէա՝՝, եւ հպարտա-
ցուցանէ զքեզ սիրտ քո [8]ծանրութեամբ.
նիստ այսուհետեւ ի տան քում, եւ ըն-
դէ՞ր անկանիս դու ի չարութիւն, եւ գա-
20 տակիցիս դու եւ Յուդաս ընդ քեզ։ Եւ
ոչ լուաւ Ամասիա. վասն զի [4]ի Տեառ-
նէ եղեւ մատնել զնա ի ձեռս Յովասու՝
յաղագս խնդրելոյն նորա զաստուածսն
21 Եդովմայեցւոց։ Եւ ել Յովաս արքայ Իս-
րայէլի եւ երեւեցան միմեանց նա եւ
Ամասիա արքայ Յուդայ, ի Բեթսա-
22 միւս՝ որ է Յուդայ։ Եւ պարտեցաւ Յու-
դա առաջի Իսրայէլի, եւ փախեաւ իւ-
23 րաքանչիւր ոք ի բնակութիւն իւր։ Եւ
զԱմասիա արքայ Յուդայ որդի Յովա-
սու[9] կալաւ Յովաս արքայ Իսրայէլի ի
Բեթսամիւս, եւ տարաւ զնա յԵրուսա-
ղէմ. եւ քակեաց ի պարսպէն Երուսա-
ղեմի, ի դրանէն Եփրեմի մինչեւ ի դուռն
24 Անկեանն, [10]երեք հարեւր կանգուն։ Եւ
զամենայն ոսկի եւ արծաթ, եւ զամե-
նայն սպաս՝ որ գտաւ ի տանն [11]Տեառն
առ Աբդեդովմայ, եւ զգանձս տան
թագաւորին եւ [12]զորդիս խառնակու-
թեանցն՝՝ առ եւ դարձաւ ի Սամարիա։
25 Եւ եկեաց Ամասիա որդի Յովասու
արքայ Յուդայ՝ յետ մեռանելոյն Յովա-
սու որդւոյ Յովաքազու արքայի Իսրա-
26 յէլի, ամս հնգետասան։ Եւ մնացեալ

[1] Եբր. ի Բենիամին [2] Եբր. Զի եթէ երթայցես, արա. զօրացիր ի պատերազմ. [3] Եբր. Աստուած [4] Եբր. յԱստուծոյ [5] Յեբր. պակասի [6] Եբր. ծխէր խունկս

[7] Եբր. Ասացեր. Ահա հարի զԵդովմ [8] Եբր. ի փառաւորել [9] Եբր. [illegible], որդւոյ Յովաքազու [10] Եբր. չորեք [11] Եբր. Աստուծոյ [12] Եբր. զպատանդս

*բանքն Ամասեայ առաջինք եւ վերջինք՝*
*ո՞չ ահա գրեալ են ի գիրս Թագաւորացն*
27 *Իսրայելի եւ Յուդայ ։ Եւ ի ժամանակին*
*յորում ի բաց եկաց Ամասիաս ի Տեառ-*
*նէ՝ յարեան ի վերայ նորա [1]զօրքն յԵ-*
*րուսաղէմ, եւ փախեաւ ի Լաքիս. եւ*
*առաքեցին զկնի նորա ի Լաքիս, եւ*
28 *սպանին զնա անդ ։ Եւ բարձին զնա ի*
*վերայ ձիոց, եւ թաղեցին զնա ընդ հարս*
*իւր ի քաղաքի Դաւթի ։*

## ԳԼ. ԻԶ

1 **Ե**ւ *առ ամենայն ժողովուրդ [2]երկրին*
*զՈզիաս, եւ էր նա ամաց վեշտասա-*
*նից, եւ թագաւորեցուցին զնա փոխա-*
2 *նակ հօրն իւրոյ Ամասեայ ։ Նա շինեաց*
*զԵլաթ, եւ նա դարձոյց զնա անդրէն*
*ի Յուդա՝ յետ [3]ննջելոյն արքային ընդ*
3 *հարս իւր ։ Որդի վեշտասան ամաց թա-*
*գաւորեաց Ոզիաս, եւ յիսուն եւ եր-*
*կուս ամս թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ*
*անուն մօր նորա Յեքելիա՝ յԵրուսաղեմէ ։*
4 *Եւ արար ուղղութիւն առաջի Տեառն,*
*ըստ ամենայնի զոր արար Ամասիա հայր*
5 *նորա ։ Եւ խնդրեաց զՏէր յաւուրս Զա-*
*քարեայ իմաստնոյ [4]երկիւղիւ Տեառն.*
*յաւուրս նորա" խնդրեաց նա զՏէր, յա-*
6 *ջողեաց նմա Տէր ։ Եւ ել եւ պատերազ-*
*մեցաւ ընդ այլազգիս, եւ քակեաց զպա-*
*րիսպն Գեթայ եւ զպարիսպն Յամնեայ եւ*
*զպարիսպն Ազովտայ, եւ շինեաց [5]զքա-*
*ղաքսն Ազովտայ" ի մէջ այլազգեացն ։*
7 *Եւ զօրացոյց զնա [6]Տէր ի վերայ այլազ-*
*գեացն եւ ի վերայ Արաբացւոցն որք*
*բնակէին [7]ի վիմին եւ ի վերայ Մինեց-*
8 *ւոցն ։ Եւ տային [8]Մինեցիքն ընծայս Ո-*
*զիայ. եւ էր անուն նորա մինչեւ ի մուտն*
*Եգիպտոսի, վասն զի զօրացաւ յոյժ ։*
9 *Եւ շինեաց Ոզիաս [9]զաշտարակսն Երու-*
*սաղեմի առ դրան Զորոյն եւ առ ան-*
10 *կիւնսն, եւ զօրացոյց" ։ Եւ շինեաց աշ-*
*տարակս յանապատին, եւ փորեաց ջրհորս*
*բազումս, վասն զի անասուն բազում*
*էր նորա [10]ի Սեփեղա եւ ի դաշտին, [11]եւ*
*այգեգործք ի լերինն եւ ի Կարմեղոս.*
11 *քանզի սիրէր զերկրագործութիւն ։ Եւ*
*եղեն Ոզիայ զօրք որք առնէին պատե-*
*րազմ, եւ ելանէին ի մարտ գունդք. եւ*
*թիւն նոցա ի ձեռն Յէէլի դպրապետի*
*եւ Մասեայ դատաւորի, ի ձեռն Անա-*
12 *նիայի [12]փոխանակի արքայի ։ Ամենայն*
*գունդք գլխաւորացն զօրաւորաց ի պա-*
*տերազմին երկու հազար եւ վեց հա-*
13 *րեւր ։ Եւ ընդ նոսա զօր պատերազմօղ՝*
*երեք հարեւր հազար եւ եւթն հազար եւ*
*հինգ հարեւր. նոքա էին որք առնէին*
*պատերազմ զօրութեամբ մեծաւ, [13]օգ-*
*նական լինել արքային ի հակառակոր-*
14 *դացն" ։ Եւ պատրաստէր նոցա Ոզիաս ա-*
*մենայն զօրուն՝ վահանս եւ նիզակս եւ*
*սաղաւարտս եւ զրահս եւ աղեղունս եւ*
15 *պարսս ի քարինս ։ Եւ արար յԵրուսաղէմ*
*մեքենայս արուեստից ճարտարութեան՝*
*լինել ի վերայ պարսպաց եւ ի վերայ*
*անկեանց, ձգել նետս եւ քարինս մե-*
*ծամեծս ։ Եւ լսելի եղեւ [14]պատրաստու-*
*թիւն նորա մինչեւ ի հեռաստան. վասն*
*զի սքանչելի էր նա յօգնել մինչեւ զօ-*
16 *րացաւ ։ Եւ իբրեւ զօրացաւ, բարձրա-*
*ցաւ սիրտ նորա առ յապականել, եւ*
*անիրաւեցաւ ի Տէր Աստուած իւր. եւ*
*եմուտ ի տաճարն Տեառն ծխել խունկս*
17 *ի վերայ սեղանոյ խնկոցն ։ Եւ եմուտ*
*զհետ նորա Ազարիաս քահանայ, եւ ընդ*
*նմա քահանայքն Տեառն ութսուն՝ որ-*
18 *դիք զօրաւորք. Կացին ի վերայ Ոզիայ*
*արքայի եւ ասեն ցնա, Ոչ է քո, Ո-*
*զիաս, ծխել խունկս Տեառն, այլ քա-*
*հանայից որդւոց Ահարոնի սրբեցելոցդ*
*է ծխել զայդ. ել արտաքս ի սրբու-*
*թենէդ, վասն զի ապստամբեցեր դու*
*[1]ի Տեառնէ, եւ ոչ եւս լիցի քեզ այդ ի*
19 *փառս ի Տեառնէ Աստուծոյ ։ Եւ սրտմտե-*
*ցաւ Ոզիաս, եւ ի ձեռին իւրում բու-*
*րվառն ծխել զխունկս [1]ի տաճարին. եւ*
*ի բարկանալն նորա քահանայիցն՝ երե-*
*ւեցաւ բորոտութիւն ի ճակատն նորա*
*յանդիման քահանայիցն ի տանն Տեառն*
20 *[15]ի վերայ սեղանոյ խնկոցն ։ Եւ դարձաւ*
*առ [16]նա քահանայն առաջին եւ այլ քա-*
*հանայքն, եւ ահա բորոտեալ էր ճա-*
*կատն նորա, եւ [17]փութացուցին զնա*
*անտի. քանզի եւ ինքն իսկ փութացաւ*
*ելանել, զի [18]յանդիմանեաց զնա Տէր ։*

[1] Յեբր· դոլոսե [2] Եբր· Յուդայ [3] Եբր· ննջելոյն [4] Եբր· ի տեսիլս Աստուծոյ. և յաւուրսն յորս [5] Եբր· քաղաքս յԱզովտե [6] Եբր· Աստուած [7] Եբր· ի Գուրբաղաղ [8] Եբր· Ամմոնացիքն [9] Եբր· աշտարակս յԵրուսաղէմ առ դրան Անկեանն և առ դրան Զորոյն, և առ դարձուածոյն և զօրացոյց զնոսա [10] Եբր· ի հովտին [11] Եբր· և երկրագործք և.

[12] Եբր· յիշխանաց [13] Եբր· յօգնութիւն արքայի ընդդէմ թշնամեաց [14] Եբր· համբաւ [15] Եբր· առընթեր [16] Եբր· նա Ազարիա [17] Եբր· փութացուցին [18] Եբր· եհար

21 Եւ էր Ողիաս արքայ բորոտեալ մինչեւ
ցօր վախճանի իւրոյ, եւ ի տանն [1]ա-
փուսոյթ նստէր բորոտեալ. վասն զի ո-
րոշեցաւ ի տանէն Տեառն. եւ Յովաթամ
որդի նորա էր ի վերայ [2]թագաւորութեան
նորա", դատել զժողովուրդ երկրին։
22 Եւ մնացեալ բանքն Ողիայ առաջինք
եւ վերջինք՝ գրեալ են յԵսայեայ որդ-
23 ւոյ Ամովսայ մարգարէէ։ Եւ ննջեաց
Ողիա ընդ հարս իւր, եւ թաղեցին զնա
ընդ հարս նորա ի դաշտի գերեզմանի
թագաւորացն. վասն զի ասացին թէ
Բորոտ է. եւ թագաւորեաց Յովաթամ
որդի նորա փոխանակ նորա։

ԳԼ. ԻԷ

1 Որդի քսան եւ հինգ ամաց էր Յովա-
թամ ի թագաւորելն իւրում, եւ վեշ-
տասան ամ թագաւորեաց յԵրուսաղէմ.
եւ անուն մօր նորա Յերուսայ դուստր
2 Սադովկայ։ Եւ արար ուղղութիւն ա-
ռաջի Տեառն ըստ ամենայնի զոր ինչ
արար Ողիաս հայրն նորա. բայց ոչ ե-
մուտ ի տաճարն Տեառն. եւ տակաւին
3 եւս ժողովուրդն ապականեալ էր։ Նա
շինեաց զդուռն տանն Տեառն զբարձր,
եւ ի պարսպին Ոփղայ շինեաց բա-
4 զումս։ Եւ քաղաքս շինեաց ի լերինն
Յուդայ, եւ յանտառս [3]շինակութիւնս
5 եւ աշտարակս։ Նա կռուեցաւ ընդ ար-
քայի որդւոց Ամոնայ, եւ զօրացաւ ի
վերայ նոցա. եւ տային նմա որդիքն
Ամոնայ ի միում ամում հարիւր տա-
ղանդ արծաթոյ, եւ տասն հազար քոռ
ցորենոյ, եւ գարի՝ տասն հազար քոռ.
[4]բերէր զայն նմա արքայն Ամոնայ ամի
ամի. եւ յառաջնում ամին եւ յերկրոր-
6 դին եւ յերրորդին"։ Եւ զօրացաւ Յո-
վաթամ, վասն զի պատրաստեաց զճա-
նապարհս իւր առաջի Տեառն Աստու-
ծոյ իւրոյ։
7 Եւ մնացեալ բանքն Յովաթամայ եւ
[5]պատերազմն նորա եւ մարտք իւր" ա-
հա գրեալ են ի գիրս թագաւորացն Յու-
8 դայ եւ Իսրայելի։ Քսան եւ հինգ ա-
մաց էր յորժամ թագաւորեաց, եւ վեշ-
տասան ամ թագաւորեաց յԵրուսաղէմ։

9 Եւ ննջեաց Յովաթամ ընդ հարս իւր,
եւ թաղեցաւ ի քաղաքին Դաւթի, եւ
թագաւորեաց Աքազ որդի նորա փոխա-
նակ նորա։

ԳԼ. ԻԸ

1 Որդի քսան ամաց էր Աքազ ի թագա-
ւորելն իւրում, եւ վեշտասան ամ թա-
գաւորեաց յԵրուսաղէմ. եւ ոչ արար
ուղղութիւն առաջի Տեառն իբրեւ զԴա-
2 ւիթ զհայր իւր. Եւ գնաց ըստ ճանա-
պարհաց թագաւորացն Իսրայելի. [6]քան-
3 զի արար դրօշեալս. Եւ կռոց նոցա զո-
հէր յերկրին Բենոմայ", եւ անցուցանէր
զորդիս իւր ընդ հուր, ըստ զարշու-
թեան ազգացն զորս սատակեաց Տէր յե-
4 րեսաց որդւոցն Իսրայելի. [7]Եւ ծխէր
խունկս ի վերայ բարձանց եւ ի վերայ
[8]տանեաց եւ ի ներքոյ ամենայն վար-
սաւոր ծառոց։
5 Եւ մատնեաց զնա Տէր Աստուած նո-
րա ի ձեռս արքային Ասորւոց, եւ ե-
հար զնա, եւ գերեաց ի նոցանէ գերու-
թիւն բազում, եւ տարաւ ի Դամաս-
կոս. եւ ի ձեռս արքային Իսրայելի մատ-
նեաց զնա, եւ եհար զնա հարուածս մե-
6 ծամեծս։ Եւ կոտորեաց Փակէէ որդի
Ռովմելեայ [9]արքայ Իսրայելի" ի Յուդայ
ի միում աւուր հարիւր եւ քսան հազար
արանց զօրաւորաց զօրութեամբ, ի թո-
ղուլն նոցա զՏէր Աստուած հարցն իւ-
7 րեանց։ Եւ սպան Զեքրի զօրաւորն Եփ-
րեմի զԱմասիաս զորդի արքային, եւ
զԵզրիկամ իշխան տան նորա, եւ զԵղ-
8 կանա զփոխանորդ արքային։ Եւ գերե-
ցին որդիքն Իսրայելի յեղբարցն իւրեանց
[10]երեք հարեւր" հազար կանայս, եւ ուս-
տերս եւ դստերս, եւ աւար բազում
առին ի նոցանէ. եւ տարան զաւարն ի
Սամարիա։
9 Եւ էր անդ մարգարէ Տեառն, Ովդեդ
անուն նորա. ել նա ընդ առաջ զօրուն
եկելոց ի Սամարիա, եւ ասէ ցնոսա, Ա-
հա բարկութիւն Տեառն Աստուծոյ հարցն
ձերոց եղեւ ի վերայ Յուդայ, եւ մատ-
նեաց զնոսա ի ձեռս ձեր, եւ կոտորե-
ցէք զնոսա բարկութեամբ, եւ մինչեւ
10 յերկինս ժամանեաց։ Եւ արդ զորդիսդ
Յուդայ եւ զԵրուսաղեմի, դուք ասէք

[1] Այլքն. զատուցեալ [2] Ոմն. տան թագաւորին
[3] Ոմն. ամրոցս [4] Ոմն. եւ տային նմա որդիքն Ա-
մոնայ եւ յերկրորդում ամին, եւ յերրորդումն
[5] Ոմն. ամենայն պատերազմունք նորա եւ ճա-
նապարհք նորա

[6] Ոմն. և արար դրօշեալս Բահաղիմայ։ (3) Եւ ծխէր
ի հովտին որդւոցն Ենովմայ [7] Ոմն. Եւ զոհէր և
[8] Ոմն. բլրոց [9] Ոմն. դոխաւե [10] Ոմն. երկերիւր

առնալ ի ծառայս եւ յաղախնայս. ո՞չ
ապաքէն [1]աւասիկ եմ ընդ ձեզ, վկայ
11 լինել՝ Տեառն Աստուծոյ ձերում։ Եւ
արդ լուարուք ինձ, եւ դարձուցէք անդ-
րէն զգերութիւնդ զորս գերեցէք դուք
յեղբարց ձերոց. վասն զի բարկութիւն
սրտմտութեան Տեառն լինի ի վերայ ձեր։
12 Եւ յարեան իշխանք որդւոցն Եփրեմի,
Ազարիաս որդի Յոհնանու, եւ Բարա-
քիաս որդի Մոսոքղմովթայ, եւ Եզե-
կիաս որդի Սեղումայ, եւ Ամեսայի որդի
Ադղիայ ի վերայ եկելոցն ի պատերազմէն,
13 Եւ ասեն ցնոսա, Մի՛ ածէք զգերու-
թիւնդ վայր այսր առ մեզ. վասն զի
մեղանչել մեզ առ Տէր դուք ասէք, եւ
յաւելուլ ի մեղսն մեր եւ ի տգիտու-
թիւնս. քանզի բազում են մեղք մեր
այդուքիկ, եւ բարկութիւն սրտմտու-
թեան Տեառն լինի ի վերայ Իսրայէլի։
14 Եւ թողին պատերազմողքն զգերութիւնն
եւ զաւարն առաջի իշխանացն եւ ամե-
15 նայն եկեղեցւոյն։ Եւ յարեան ամենայն
արք որ կոչեցան յանուանէ, եւ խնա-
մակալութիւնս արարին գերութեանն.
զամենեսեան զմերկսն զգեցուցին յա-
ւարէն, եւ ագուցին նոցա [2]կօշիկս, եւ
ետուն ուտել՝, եւ օծին իւղով. եւ ա-
ռին գրաստուք զամենայն տկարս, եւ
տարան զնոսա յԵրիքով քաղաք Արմա-
ւենեաց առ եղբարսն իւրեանց, եւ իւ-
քեանք դարձան ի Սամարիա։
16 Ի ժամանակին յայնմիկ առաքեաց Ա-
քազ [3]առ արքայն Ասորեաց՝ օգնել նմա.
17 Վասն զի Եդովմայեցիքն [4]յարձակեցան ի
վերայ, եւ հարին զՅուդա եւ գերեցին
18 գերութիւն։ Եւ այլազգիքն դիմեցին ի
քաղաքս դաշտին, [5]եւ Լիբէացիքն եկին ի
Յուդա՝ եւ առին զԲեթսամիւս եւ զԱյե-
ղոն եւ զԳադերովթ եւ զՍոկքով եւ զգեղս
նորա, եւ զԹամնա եւ զգեղս նորա, եւ
զԳամզով եւ զգեղս նորա, եւ բնակե-
19 ցին անդ։ Վասն զի նկուն արար Տէր
զՅուդա յաղագս Աքազու արքայի [6]Յու-
դայ, զի՝ ի բաց եկաց ապստամբութեամբ
20 ի Տեառնէ։ Եւ եկն ի վերայ նորա Թագ-
ղաթփաղասար արքայ Ասորեստանեայց,
21 եւ [7]նեղեաց զնա։ Եւ՝ առ Աքազ զոր ինչ
էր ի տանն Տեառն եւ ի տան թագաւո-
րին եւ իշխանացն, եւ ետ արքային Ա-
սորեստանեայց, եւ ոչ էր օգնականու-
22 թիւն ինչ [8]նոցա, Այլ նեղել զնոսա. եւ՝
23 յաւել եւս ի բաց կալ [9]ի Տեառնէ, Եւ ա-
սաց արքայն, Խնդրեցից զաստուածս
Դամասկոսի որք հարին զիս. եւ ասէ,
Եթէ աստուածք թագաւորին Ասորես-
տանեայց նոքա են զօրաւորք՝, նոցա
այսուհետեւ զոհեցից եւ օգնեսցեն ինձ.
եւ նոքա եղեն նմա [10]խոչ եւ ամենայն
24 Իսրայէլի։ Եւ ի բաց արար՝ Աքազ զսպաս
տանն [11]Տեառն, կոտորեաց զայն՝ եւ փա-
կեաց զդրունս տանն Տեառն. եւ արար
իւր սեղան յամենայն անկիւնս Երու-
25 սաղեմի։ Եւ յամենայն քաղաքս Յու-
դայ [12]արարին բագինս, ծխել խունկս
աստուածոց օտարաց, եւ [13]բարկացու-
ցին զՏէր Աստուած հարցն [14]իւրեանց։
26 Եւ մնացեալ բանքն նորա [15]առաջինք
եւ վերջինք՝ ահա գրեալ են ի գիրս բա-
նից թագաւորացն Յուդայ եւ Իսրայե-
27 լի։ Եւ ննջեաց Աքազ ընդ հարս իւր,
եւ թաղեցաւ ի քաղաքին [16]Դաւթի. վասն
զի ոչ մուծին զնա ի գերեզմանս [17]թա-
գաւորացն. եւ թագաւորեաց [18]Եզեկիաս
փոխանակ նորա։

## Գլ. ԻԹ

1 Եւ էր Եզեկիաս ի թագաւորելն իւրում
քսան եւ հինգ ամաց, եւ ամս քսան եւ
ինն թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ ա-
նուն մօր նորա Աբիա դուստր Զաքա-
2 րեայ։ Եւ արար ուղղութիւն առաջի
Տեառն՝ ըստ ամենայնի զոր ինչ արար
Դաւիթ հայրն նորա։
3 [19]Եւ եղեւ իբրեւ եկաց ի թագաւորու-
թեանն իւրում՝, յառաջնում ամսեանն
եբաց զդրունս տանն Տեառն, եւ կազ-

[1]Եբր. եւ ընդ ձեզ անօրէնութիւնք են [2]Եբր. համդերձս և կօշիկս և ետուն ուտել և ըմպել [3]Եբր. առ արքայս Ասորեստանեայց [4]Եբր. դարձեալ յարձակեցան [5]Եբր. եւ ի հարաւոյ Յուդայ [6]Եբր. Իսրայելի. զի անօրինեցաւ ի Յուդա եւ

[7]Եբր. նեղեաց զնա եւ ոչ օգնեաց նմա։ (21) Զի թէպէտ [8]Եբր. նմա։ (22) Եւ ի ժամանակի նեղութեան իւրոյ [9]Եբր. ի Տեառնէ, ինքն արքայ Աքազ. (23) Եւ զոհեաց աստուածոցն Դամասկոսի որ հարին զնա, և ասէ, Որովհետեւ աստուածք թագաւորացն Ասորւոց նոքա օգնեցին նոցա [10]Եբր. կործանումն եւ ամենայն Իսրայելի։ (24) Եւ ժողովեաց [11]Եբր. Աստուծոյ եւ կոտորեաց զսպաս տանն Աստուծոյ [12]Եբր. արար [13]Եբր. բարկացոյց [14]Եբր. իւրոց [15]Եբր. և ամենայն գնացք նորա առաջինք [16]Եբր. յԵրուսաղէմ [17]Եբր. թագաւորացն Իսրայելի [18]Եբր. Եզեկիա որդի նորա [19]Եբր. Յառաջնում ամի թագաւորութեան իւրոյ

4 մեաց զնոսա ։ Եւ տարաւ ի ներքս զքա-
հանայսն եւ զՂեւտացիս, եւ կոչեաց
5 զնոսա ի կողմն արեւելից ։ Եւ ասէ ցնո-
սա, Լուարուք, Ղեւտացիք․ այսուհե-
տեւ սրբեցարուք, եւ սրբեցէք զտունն
Տեառն Աստուծոյ հարցն ձերոց, եւ ի
բաց հանէք զպղծութիւնս ի սրբու-
6 թեանցն․ Վասն զի ապստամբեցին հարքն
մեր, եւ արարին չար առաջի [1]Տեառն,
եւ թողին զնա եւ դարձուցին զերեսս
7 ի խորանէն Տեառն, եւ ընդվզեցան․ Եւ
փակեցին զդրունս [2]տաճարին, եւ շի-
ջուցին զճրագունսն, եւ խունկս ոչ ծխե-
ցին նմա, եւ ոչ ողջակէզս մատուցին
8 [3]սրբոյն Աստուծոյ Իսրայէլի ։ Եւ բար-
կացաւ սրտմտութեամբ Տէր ի վերայ
Յուդայ եւ Երուսաղեմի, եւ ետ զնո-
սա ի զարմացումն եւ յապականութիւն
եւ ի շչիւն, որպէս դուք տեսանէք ա-
9 չօք ձերովք ։ Եւ ահա վիրաւորեցան
հարքն մեր սուսերօք, եւ ուստերք [4]ձեր
եւ դստերք [4]ձեր եւ կանայք [4]ձեր են ի գե-
րութեան [5]յերկրի ոչ իւրեանց, որ ենն
10 այժմ"։ Եւ այսուհետեւ [6]լիցի ի սրտի
մեր" դնել ուխտ Տեառն Աստուծոյ Իս-
րայէլի, եւ դարձուսցէ զսրտմտութիւն
11 բարկութեան իւրոյ ի մէնջ ։ Արդ [7]մի՛
ինչ նուաղէք անձինք յայժմ հետէ". վասն
զի զձեզ ընտրեաց Տէր կալ եւ պաշտել
առաջի իւր, եւ լինել նմա սպասաւոր,
եւ ծխել խունկս ։
12 Եւ յարեան Ղեւտացիքն՝ Մայէթ որ-
դի Ամասեայ եւ Յովէլ որդի Ազարեայ,
յորդւոցն Կահաթու եւ յորդւոցն Մերա-
րեայ, Կիս որդի Աբդիայ եւ Ազարիաս
որդի Յելելայ, եւ յորդւոցն Գերսոնի՝
Յովա որդի Զեմմաթայ եւ Յովադան որ-
13 դի Յովաքայ, Եւ յորդւոցն Եղիսափա-
նայ՝ Սամրի եւ Յէիէլ, եւ յորդւոցն Ա-
սափայ՝ Զաքարիաս եւ Մաթանիաս,
14 Եւ յորդւոցն Եմանայ՝ Յէքիէլ եւ Սեմէի,
եւ յորդւոցն Իդիթունայ՝ Սամիաս եւ
15 Ոզիէլ ։ Եւ ժողովեցին զեղբարս ի-
րեանց, եւ [8]սրբեցան ինքեանք" ըստ
պատուիրանի թագաւորին հրամանաւ
16 Տեառն, սրբել զտունն Տեառն ։ Եւ մտին
քահանայքն ի տունն Տեառն սրբել զնա,
եւ հանին արտաքս զամենայն պղծու-
թիւնս որք գտան [9]ի տանն Տեառն
եւ ի սրահի" տանն Տեառն․ եւ առին
Ղեւտացիքն հանել զայն ի հեղեղատն
17 Կեդրոնի արտաքս ։ Եւ սկսան յաւուրն
առաջնում յամսեանն առաջնոյ ամսոյն
սրբել զնա․ եւ որ օր ութ էր ամսոյն՝
մտին [10]ի տաճարն Տեառն, եւ սրբեցին
զտունն Տեառն յաւուրս ութ, եւ յա-
ւուրն վեշտասներորդի ամսոյն առաջ-
18 նոյ կատարեցին ։ Եւ մտին ի ներքս առ
Եզեկիաս արքայ եւ ասեն, Սրբեցաք
զամենայն որ ինչ էր ի տանն Տեառն,
զսեղան ողջակիզացն եւ զսպասն նորա,
զսեղանն առաջաւորութեան եւ զսպասն
19 իւր, Եւ զամենայն կահն զոր պղծեաց
թագաւորն Աքազ ի թագաւորու-
թեանն եւ յապստամբութեանն իւրում,
պատրաստեցաք եւ սրբեցաք, եւ ահա
է առաջի սեղանոյն Տեառն ։
20 Եւ կանխեաց Եզեկիաս արքայ՝ ժո-
ղովեաց զիշխանս քաղաքին, եւ ել ի
21 տուն Տեառն․ Եւ եհան զուարակս եւթն
եւ խոյս եւթն եւ որոջս եւթն եւ նո-
խազս այծեաց եւթն՝ վասն մեղաց թա-
գաւորութեանն եւ վասն սրբութեանցն
եւ [11]Իսրայէլի․ եւ ասէ ցորդիսն Ահա-
րոնի ցքահանայս, Մատուցէք առ սե-
22 ղանն Տեառն։ Եւ [12]զենէք զզուարակսն․
եւ ընկալան քահանայքն զարիւնն, եւ
հեղին զնա առ սեղանովն․ եւ զենին
զխոյսն, եւ հեղին զարիւնն առ սեղա-
նովն․ եւ զենին զորոջսն, եւ հեղին
23 զարիւնն առ սեղանովն ։ Եւ մատուցին
զնոխազսն զվասն մեղացն առաջի ար-
քային եւ ժողովրդեանն, եւ եդին զձեռս
24 իւրեանց ի վերայ նոցա ։ Եւ զենին զնո-
սա քահանայքն, եւ քաւեցին զարիւնն
նոցա առ սեղանովն, եւ արարին քաւու-
թիւնս ամենայն Իսրայէլի, զի յաղագս
ամենայն Իսրայէլի ասաց թագաւորն
զողջակէզսն եւ զվասն մեղացն տանել ։
25 Եւ [13]կացուցին զՂեւտացիսն ի տանն
Տեառն՝ ծնծղայիւք եւ տաւղօք եւ քնա-
րօք, ըստ պատուիրանին Դաւթայ ար-
քայի, եւ Գադայ տեսանողի թագաւո-
րին եւ Նաթանայ մարգարէի․ վասն զի
պատուիրանաւ Տեառն էր հրամանն ի
26 ձեռն մարգարէիցն ։ Եւ կացին Ղեւտա-
ցիքն նուագարանօքն Դաւթայ, եւ քա-

[1] Եբր․ Տեառն Աստուծոյ մերոյ [2] Եբր․ սրահին [3] Եբր․ ի սրբութեան [4] Եբր․ մեր [5] Եբր․ վասն այսորիկ [6] Եբր․ է ի սրտի իմում [7] Եբր․ որդեակք, մի լինիք յանհոգս [8] Եբր․ սրբեցան եւ մտին ինքեանք

[9] Եբր․ ի տաճարին Տեառն եւ ի գաւթի [10] Եբր․ ի սրահն [11] Եբր․ վասն Յուդայ [12] Եբր․ զենին [13] Եբր․ կացոյց

27 հանայքն փողովքն։ Եւ ասաց Եզեկիա
հանել զողջակէզսն ի վերայ սեղանոյն.
եւ իբրեւ սկսան հանել զողջակէզսն,
սկսան երգել Տեառն փողովքն եւ նուա-
գարանօքն Դաւթայ արքայի Իսրայելի։
28 Եւ ամենայն եկեղեցին երկիր պագա-
նէր, եւ սաղմոսանուագքն երգէին, եւ
հարկանէին զփողսն մինչեւ կատարե-
29 ցան ողջակէզքն։ Եւ իբրեւ կատարե-
ցին մատուցանել, խոնարհեցաւ թագա-
ւորն եւ ամենայն քահանայքն եւ եր-
30 կիր պագին։ Եւ ասաց արքայ Եզեկիաս
եւ իշխանքն ցՂեւտացիսն օրհնել զՏէր
բանիւքն Դաւթի եւ Ասափայ մարգա-
րէի. եւ օրհնէին ուրախութեամբ, եւ
անկան ի վերայ երեսաց եւ երկիր պագին։
31 Պատասխանի ետ Եզեկիաս եւ ասէ, Այժմ
լցէք զձեռս ձեր Տեառն, մերձեցարուք
այսուհետեւ եւ [1]բերէք ի տուն Տեառն։
Եւ եբեր [2]եկեղեցին պատարագս օրհ-
նութեան, եւ ամենայն որ ոք յօժարեալ
32 էր սրտիւ՝ ողջակէզս։ Եւ եղեւ թիւ ող-
ջակիզացն զոր մատոյց եկեղեցին, զուա-
րակք եւթանասուն, խոյք հարեւր, ո-
րոջք երկերիւր. յողջակէզսն Տեառն ա-
33 մենեքեան այնոքիկ։ Եւ որք նուիրե-
ցանն, զուարակք վեց հարեւր, ոչխարք
34 երեք հազար։ Այլ քահանայքն էին սա-
կաւք եւ ոչ կարէին [3]զենուլ զողջա-
կէզսն, եւ օգնէին նոցա եղբարքն իւ-
րեանց Ղեւտացիքն՝ մինչեւ կատարեցաւ
գործն եւ մինչեւ սրբեցան քահանայքն.
վասն զի Ղեւտացիքն յօժարութեամբ
35 սրբեցան քան զքահանայսն. Եւ ողջա-
կէզքն էին բազումք ի ճարպս [4]կատար-
մանն եւ ի փրկութիւնսն՝՝ եւ ի նուէրս
ողջակիզացն. եւ յօրինեցաւ գործն ի
36 տանն Տեառն։ Եւ ուրախ եղեւ Եզե-
կիաս եւ ամենայն ժողովուրդն վասն
[5]պատրաստելոյ զպատան Աստուծոյ՝՝ ժո-
ղովրդեանն. քանզի յանկարծակի ե-
ղեւ բանն։

ԳԼ. Լ

1 Եւ առաքեաց Եզեկիա յամենայն Իս-
րայէլ եւ Յուդա, եւ գրեաց թուղթ
յԵփրեմ եւ ի Մանասէ, գալ ի տունն
Տեառն յԵրուսաղէմ, եւ առնել զպա-
2 սեքն Տեառն Աստուծոյ Իսրայելի։ Եւ
խորհեցաւ արքայ եւ իշխանքն, եւ ամե-
նայն եկեղեցին որ յԵրուսաղէմ, առնել
3 զպասեքն յամսեանն երկրորդի. Վասն
զի ոչ կարացին առնել զնա ի ժամանակին
յայնմիկ, զի քահանայքն ոչ սրբեցան բա-
ւականք, եւ ժողովուրդն ոչ ժողովեցաւ
4 յԵրուսաղէմ։ Եւ հաճոյ թուեցաւ բանն
առաջի արքայի եւ առաջի եկեղեցւոյն.
5 Եւ հաստատեցին բան, զի անցցեն քա-
րոզքն ընդ ամենայն Իսրայէլ, ի Բեր-
սաբէէ մինչեւ ի Դան, գալ եւ առնել
զպասեքն Տեառն Աստուծոյ Իսրայելի
յԵրուսաղէմ. վասն զի [6]բազմութիւնն
ոչ արար՝՝ ըստ գրոյն։
6 Եւ գնացին սուրհանդակքն հանդերձ
թղթովքն ի թագաւորէն եւ յիշխանացն
յամենայն Իսրայէլ եւ Յուդա, ըստ
հրամանի թագաւորին. եւ ասէին ցոր-
դիսն Իսրայելի, Դարձարուք առ Տէր
Աստուած Աբրահամու, Իսահակայ եւ
[7]Յակոբայ, եւ դարձցի նա առ ապրեալս
եւ մնացեալս ի ձեռաց արքային Ասորե-
7 ստանեայց։ Եւ մի լինիք իբրեւ զեղբարսն
ձեր եւ զհարսն ձեր որք ի բաց կացին ի
Տեառնէ Աստուծոյ հարցն իւրեանց, եւ
մատնեաց զնոսա ի կործանումն, որպէս
8 դուք տեսանէք։ Եւ արդ մի խստացու-
ցանէք զպարանոցս [8]ձեր. տուք փառս
Աստուծոյ՝՝, եւ մտէք ի սրբութիւն նորա
զոր սրբեաց յաւիտեան, եւ ծառայեցէք
Տեառն Աստուծոյ ձերում, եւ դարձուս-
ցէ ի ձէնջ զբարկութիւն սրտմտութեան
9 իւրոյ։ Վասն զի ի դառնալն ձերում առ
Տէր, եղբարք ձեր եւ որդիք ձեր եղի-
ցին ի գթութիւնս առաջի [9]ամենայն
գերչացն իւրեանց, եւ դարձուսցէ զնո-
սա յերկիրս յայս. քանզի ողորմած
եւ գթած է Տէր Աստուած [10]մեր,
եւ ոչ դարձուսցէ զերեսս իւր [11]ի մէնջ
եթէ դառնայցեմք՝՝ առ նա։
10 Եւ սուրհանդակքն երթային քաղաք
ի քաղաքէ, [12]ի լերինս Եփրեմի եւ Մա-
նասէի, մինչեւ ի Զաբուղոն. եւ լինէր
իբրեւ ծաղր իմն առնել զնոսա եւ ար-

[1] Ոմնք. բերէք զոհս եւ պատարագս օրհնութեան
[2] Ոմնք. եկեղեցին զոհս եւ
[3] Ոմնք. մորթել
[4] Ոմնք. խաղաղականացն
[5] Ոմնք. որոյ պատրաստեաց Աստուած

[6] Կամ, ի բազում ժամանակաց հետէ չէր նոցա արարեալ
[7] Ոմնք. Իսրայելի
[8] Ոմնք. ձեր որպէս հարքն ձեր. տուք ձեռն Տեառն
[9] Ոմնք. գերեաց
[10] Ոմնք. ձեր
[11] Ոմնք. ի ձէնջ եթէ դառնայցէք
[12] Ոմնք. յերկիրն

11 համարհել։ Բայց արք յԱսերայ եւ ի
Մանասէէ եւ ի Զաբուղոնէ պատկառե-
12 ցին եւ եկին յԵրուսաղէմ։ Եւ ի Յու-
դաս եւս եղեւ ձեռն [1]Տեառն տալ նոցա
[2]սիրտ՝ ի գալ եւ՝՝ առնել ըստ հրամանի
թագաւորին եւ իշխանացն բանիւ Տեառն։
13 Եւ գումարեցաւ յԵրուսաղէմ ժողո-
վուրդ բազում առնել զտօն բաղարջոցն
յամսեանն երկրորդի, եկեղեցի բազում
14 յոյժ։ Եւ յարեան քակեցին զսեղանսն
որ էին յԵրուսաղէմ, եւ զամենայն ան-
դիսն ուր ծխէին խունկս սնոտեացն՝
կործանեցին եւ ընկեցին ի հեղեղատն
15 Կեդրոնի։ Եւ զենին զպասեքն որ օր չո-
րեքտասան էր ամսոյն երկրորդի. եւ
քահանայքն եւ Ղեւտացիք պատկառե-
ցին եւ սրբեցան, եւ տարան ի ներքս
16 զողջակէզսն ի տունն Տեառն։ Եւ կա-
ցին ի կայանսին իւրեանց ըստ օրինին
իւրեանց, ըստ պատուիրանին Մովսէսի
առնն Աստուծոյ. եւ քահանայքն [3]ըն-
դունէին զարիւնն ի ձեռաց Ղեւտաց-
17 ւոցն։ Վասն զի բազումք յեկեղեցւոյն
ոչ սրբեցան. եւ Ղեւտացիքն զենուին
զպասեքն ամենայնի որ ոչ կարաց սուրբ
18 լինել Տեառն։ Քանզի յոլովք ի ժողո-
վրդենէն Եփրեմի եւ Մանասէի եւ Ի-
սաքարայ եւ Զաբուղոնի ոչ սրբեցան,
այլ կերան զպասեքն արտաքոյ գրոյն.
եւ յաղօթս եկաց Եզեկիաս վասն նոցա եւ
ասէ, Տէր բարերար, քաւիչ լեր ամենայն
19 սրտից ուղղոց, Որք խնդրեն [4]զքեզ Տէր՝՝
Աստուած հարցն իւրեանց, եւ ոչ են
20 ըստ սրբութեան սրբութեանց։ Եւ լուաւ
Տէր Եզեկիայ եւ բժշկեաց զժողովուրդն։
21 Եւ արարին որդիքն Իսրայէլի որք
գտան յԵրուսաղէմ՝ զտօն բաղարջակե-
րացն աւուրս եւթն ուրախութեամբ մե-
ծաւ, [5]յանջորդել Տեառն՝՝ օր ըստ օրէ
եւ քահանայքն եւ Ղեւտացիքն նուա-
22 գարանօքն Տեառն։ Եւ խօսեցաւ Եզե-
կիաս ի սիրտ ամենայն [6]Ղեւտացւոցն
եւ յայլոց իմաստնոցն՝՝ որք իմանային
զհանճար բարի Տեառն, եւ կատարեցին
զտօն բաղարջոցն աւուրս եւթն, զե-
նուլ զզոհս [7]փրկութեանն եւ խոստովան
լինել Տեառն Աստուծոյ հարցն իւրեանց։
23 Եւ խորհեցաւ եկեղեցին միանգամայն
առնել այլ եւս աւուրս եւթն, եւ ա-
րարին զուրախութիւնն զեւթն եւս օր։
24 Վասն զի [8]Եզեկիաս սկսաւ տալ ի Յու-
դայ եկեղեցւոյն՝՝ զուարակս հազար եւ
ոչխարս եւթն հազար. եւ իշխանքն
[9]սկսան տալ՝՝ ժողովրդեանն զուարակս
հազար եւ ոչխարս տասն հազար. եւ
սրբեցան ի քահանայիցն բազումք յոյժ։
25 Եւ ուրախ եղեւ ամենայն [10]եկեղեցին,
քահանայքն եւ Ղեւտացիքն եւ ամենայն
ժողովուրդն [11]Յուդայ, եւ որք գտան
անդ՝՝ յԻսրայէլէ, եւ եկքն որք եկեալ
էին յերկրէն Իսրայէլի, եւ բնակիչքն Յու-
26 դայ։ Եւ եղեւ ուրախութիւն մեծ յԵ-
րուսաղէմ. յաւուրցն Սողոմոնի որդւոյ
Դաւթի արքայի Իսրայէլի ոչ եղեւ այն-
պէս տօն յԵրուսաղէմ։
27 Եւ յարեան քահանայքն Ղեւտացիք
օրհնեցին զժողովուրդն, եւ լսելի եղեւ
ձայն նոցա, եւ եկին աղօթք նոցա ի
բնակութիւն [12]սուրբ Տեառն՝՝ յերկինս։

## ԳԼ. ԼԱ

1 Եւ իբրեւ կատարեցաւ այն ամենայն,
ել ամենայն Իսրայէլ գտեալքն՝ ի քա-
ղաքսն Յուդայ, եւ փշրեցին զարձանսն
եւ կոտորեցին զանտառսն եւ կործա-
նեցին զբարձրաւանդակսն եւ զբագինսն
յամենայն Հրէաստանէ եւ Բենիամենէ
եւ յԵփրեմէ եւ ի Մանասէէ մինչեւ ի
սպառ. եւ դարձաւ ամենայն Իսրայէլ
իւրաքանչիւր ոք ի ժառանգութիւն իւր,
եւ ի քաղաքսն իւրեանց։
2 Եւ կարգեաց Եզեկիաս հանապազոր-
դեան պաշտօնեայս քահանայից եւ Ղե-
ւտացւոց, զհանապազօրեայս իւրաքան-
չիւր ուրուք ըստ պաշտաման իւրում,
քահանայից եւ Ղեւտացւոց, յողջակէզսն
եւ ի զոհսն [13]փրկութեան, եւ յօրհնել եւ
խոստովան լինել եւ պաշտել ի դրունս
3 սրահիցտանն Տեառն։ Եւ մասն թագաւո-
րին յընչից իւրոց յողջակէզսն առաւօտու
եւ երեկորին, եւ յողջակէզսն շաբաթուցն
եւ ամսամտիցն եւ ի տօնսն գրեալս յօրէնս
4 Տեառն։ Եւ ասաց ժողովրդեանն որ
բնակէին յԵրուսաղէմ, տալ զմասն քա-
հանայիցն եւ Ղեւտացւոց, զի զօրաս-
5 ցին ի սպասու տանն Տեառն։ Եւ որ-
պէս հրամայեաց բանն, յաւելին եւս
որդիքն Իսրայէլի զպտուղ ցորենոյն եւ

[1] Եբր. Աստուծոյ [2] Եբր. սիրտ մի [3] Եբր. սրսկէին
[4] Եբր. զԱստուած, Տէր [5] Եբր. և գովէին զՏէր [6] Եբր.
Ղեւտացւոցն իմաստնոց [7] Եբր. խաղաղութեանն

[8] Եբր. Եզեկիաս արքայ Յուդայ ետ եկեղեցւոյն [9] Եբր.
ետուն [10] Եբր. ժողովուրդն Յուդայ և [11] Եբր. եկեալ
[12] Եբր. սրբութեան նորա [13] Եբր. խաղաղականս

գինւոյ եւ ձիթոյ եւ մեղու, եւ զամե-
նայն արմտեաց անդաստանաց, եւ զտա-
սանորդսն զամենայն բերէին բազում
6 յոյժ։ Եւ որդիքն Իսրայէլի եւ Յուդայ,
որք բնակեալ էին ի քաղաքսն Յուդայ,
եւ նոքա ածէին զտասանորդս զուարա-
կացն եւ [1]ոչխարաց, եւ" բերեալ կու-
7 տեցին շեղջս շեղջս։ Յամսեանն երրորդի
սկսան շեղջքն արկեալ ածանել, եւ յեւթ-
8 ներորդում ամսեանն կատարեցան։ Եւ
եկն Եզեկիաս եւ իշխանքն եւ տեսին
զշեղջսն, եւ օրհնեցին զՏէր եւ զժո-
9 ղովուրդ նորա զԻսրայէլ։ Եւ հարցանէր
Եզեկիաս ցքահանայսն եւ ցՂեւտացիսն
10 վասն շեղջիցն։ Եւ ասէ ցնա Ազարիաս
քահանայ՝ իշխան ի տանէն Սադովկայ,
Յորմէ հետէ սկսան զպտուղս բերել ի
տուն Տեառն, կերաք եւ արբաք եւ թո-
ղաք զմնացորդս. վասն զի Տէր օրհ-
նեաց զժողովուրդ իւր, եւ մնաց եւս
11 յառաւելութենէ այս։ Եւ ասէ Եզեկիաս,
Պատրաստեցէք եւ այլ եւս շտեմարանս
12 ի տանն Տեառն. եւ պատրաստեցին։ Եւ
բերին անդր զպտուղսն եւ [2]զտասանորդսն
հաւատովք. եւ էր նոցա վերակացու
Քոնենիաս Ղեւտացի, եւ Սեմէի եղ-
13 բայր նորա փոխանորդ նորին, Եւ Յէքիէլ
եւ Ոզիաս եւ Նահաթ եւ Ասայէլ եւ
Յերիմովթ եւ Յովզաբադ եւ Եղիէլ եւ
Սամաքիա եւ Մաաթ եւ Բանեա, [3]եւ
որդիք նորա" որք կային անդ ի ձեռն
Քոնենեայ եւ Սեմեայ եղբօր նորա,
որպէս եւ հրամայեաց արքայ Եզեկիաս,
եւ Ազարիաս առաջնորդ տանն Տեառն։
14 Եւ Կորէ որդի Յեմնայ Ղեւտացի դռնա-
պանն ընդ արեւելս կողմն ի վերայ [4]տա-
նեացն տալ զպտուղսն Տեառն, եւ
15 զսրբութիւն սրբութեանցն, [5]ի ձեռն Ո-
դոմայ եւ Մինիամինի եւ Յեսուայ եւ
Սեմեայ եւ Մարիայ եւ Սեքենեայ, [6]ի
ձեռն քահանայիցն հաւատարմութեամբ,
տալ եղբարցն նոցա ըստ հանապազոր-
դեան պաշտամանէիցն, ըստ մեծի եւ փո
16 քու, [7]Բաց ի ծննդոց" արուացն յերե-
մենից եւ ի վեր. ամենայնի որ մտա
նէր ի տուն Տեառն ի համարի աւուրցն
յաւուրս, ի պաշտօնն հանապազորդեան

[1] Ոմանք. ոչխարացն, եւ զտասանորդ սրբութեանցն որբելոց Տեառն Աստուծոյ իւրեանց, [2] Ոմանք. զտասանորդսն և զնուէրսն [3]Յ Ոմանք. դ–լ–ն [4] Ոմանք. նուիրացն Աստուծոյ [5] Ոմանք. Ի ձեռն նորա՝ [6] Ոմանք. ի քաղաքս [7] Ոմանք. Նա եւ թուելոց յազգահամարին

17 ըստ կարգին իւրեանց։ Եւ [8]այս էր հա-
մար" քահանայիցն ըստ տանց տոհմիցն,
եւ [9]Ղեւտացիքն ի հանապազորդեան
պաշտամանն ի քսանամենից եւ ի վեր,
18 ի կարգի ըստ համարուն. [10]Յամենայն
ծնունդս" ուստերաց նոցա եւ դստե-
րաց, համբերձ ամենայն յոլովութեամբ.
վասն զի հաւատովք [11]սրբեցին զսրբու-
19 թիւն"։ Եւ որդւոցն [12]Ահարոնի, որք ի-
նէին քահանայք. եւ ի քաղաքացն նո-
ցա", յամենայն քաղաքի այր անուանիք
որք անուանեցան տալ զբաժին ամենայն
արուի քահանայիցն, եւ յամենայնի որ
20 մտեալ էր ի թիւ Ղեւտացւոցն։ Եւ արար
այնպէս Եզեկիաս յամենայն Յուդա. եւ ա-
րար բարի եւ [13]ուղղութիւն առաջի Տեառն
21 Աստուծոյ իւրոյ։ Եւ ամենայն գործովք
որովք սկսաւ գործել [14]ի տանն Տեառն",
ըստ օրինացն Տեառն եւ ըստ հրամանաց,
խնդրեաց զԱստուած իւր յամենայն սրտէ
իւրմէ, արար եւ յաջողեցաւ։

## ԳԼ. ԼԲ

1 Եւ յետ բանիցս այսոցիկ եւ ճշմարտու-
թեանս այսորիկ եկն Սենեքերիմ արքայ
Ասորեստանեայց ի վերայ Յուդայ, եւ
բանակեցաւ զպարսպաւոր քաղաքօքն,
2 եւ ասէր առնուլ զնոսա։ Եւ ետես Ե-
զեկիաս թէ եկն Սենեքերիմ դէմ յան-
դիման նորա պատերազմել ընդ Երու-
3 սաղեմի, Խորհեցաւ ընդ ծերսն եւ ընդ
զօրաւորսն խնուլ զջուրս աղբերացն որք
էին արտաքոյ քաղաքին, եւ լցին զնո-
4 սա։ Եւ գումարեաց ժողովուրդ բազում,
եւ լցին զջուրս աղբերցն, եւ զգետն
որ բաժանէր անցանելով ընդ մէջ [15]քա-
ղաքին, եւ ասեն, Մի՛ գուցէ եկեալ ար-
քայն Ասորեստանի գտցէ ջուր բազում
5 [3]եւ զօրասցի"։ Եւ հզօրեցաւ Եզեկիաս,
եւ շինեաց զամենայն պարիսպս կոր-
ծանեալս [16]եւ զաշտարակս, եւ արտա-
քոյ զառաջին պարիսպն եւ զմեւսն
եւս". եւ զօրացոյց [17]զպատուարսն քա-

[8] Ոմանք. թուելոցն յազգահամարին [9] Ոմանք. Ղեւտացւոցն [10] Ոմանք. Եւ թուելոցն յազգահամարին ամենայն մանկանց նոցա, կանանց նոցա եւ [11] Ոմանք. սրբեցին զանձինս ի սրբութիւն [12] Ոմանք. Ահարոնի, քահանայից, յանդաստանս արուարձանաց քաղաքացն նոցա [13] Ոմանք. ուղղութիւն եւ ճշմարտութիւն [14] Ոմանք. ի պաշտօն տանն Աստուծոյ և [15] Ոմանք. երկրին [16] Ոմանք. եւ բարձրացոյց մինչեւ ցաշտարակսն, կամ, բարձրացոյց զաշտարակսն եւ արտաքոյ մեւս եւս պարիսպ [17] Ոմանք. զՄեղոն (տես Գ Թագ. Թ. 24։)

զաքին Դաւթի, եւ կազմեաց զէնս [1]բա-
6 զումս։ Եւ արար իշխանս պատերազմի
ի վերայ զօրուն, եւ [2]ժողովեցան առ նա
ի հրապարակ դրոյն". խօսեցաւ ի սիրտ
7 նոցա եւ ասէ, Զօրացարուք եւ քաջ լե-
րուք, մի երկնչիք յերեսաց թագաւորին
Ասորեստանեայց, եւ մի յերեսաց ամենայն
ազգացն որ ընդ նմա. վասն զի ընդ մեզ
8 բազումք են քան ընդ նմա։ Ընդ նմա
բազուկք մարմնեղէնք, եւ ընդ մեզ Տէր
Աստուած մեր՝ ապրեցուցանել զմեզ, եւ
պատերազմել զպատերազմ մեր։ Եւ
քաջալերեցաւ ժողովուրդն բանիւքն
Եզեկեայ արքայի Յուդայ։
9 Եւ յետ այսորիկ առաքեաց Սենեքե-
րիմ արքայ Ասորեստանեայց զծառայս
իւր յԵրուսաղէմ, եւ ինքն էր ի Լաքիս,
եւ ամենայն զօրք ընդ նմա. եւ առա-
քեաց առ Եզեկիա արքայ [3]Յուդայ յԵ-
10 րուսաղէմ, եւ ասէ, Այսպէս ասէ Սե-
նեքերիմ արքայ Ասորեստանեայց. Յա՞
զուք յուսացեալ նստիք յամրոցդ Երու-
11 սաղեմի. Ո՞չ ապաքէն Եզեկիաս խաբէ
զձեզ, մատնել զձեզ ի մահ, ի սով եւ
ի ծարաւ, եւ ասէ, Տէր Աստուած մեր
փրկեսցէ զմեզ ի ձեռաց արքայի Ասո-
12 րեստանեայց։ Ո՞չ այդ Եզեկիաս է, որ
քակեաց զսեղանս նորա եւ զբարձունս
նորա, եւ ասաց ցՅուդա եւ ցբնակիչսն
Երուսաղեմի, Առաջի սեղանոյս այսորիկ
միայն երկիր պագէք, եւ ի վերայ սո-
13 րա [4]զոհեցէք։ Ո՞չ գիտացէք զինչ ա-
րարի ես եւ հարքն իմ ամենայն ժո-
ղովրդոց գաւառաց. միթէ կարելով կա-
րացի՞ն աստուածք ազգաց ամենայն երկ-
րի փրկել զժողովուրդ իւրեանց ի ձե-
14 ռաց իմոց։ Զո՞ ոք յամենայն աստուա-
ծոց ազգացն այնոցիկ ոչ սատակեցին
հարքն իմ. միթէ կարացի՞ն ապրեցու-
ցանել զժողովուրդ իւրեանց ի ձեռաց
իմոց. եւ զիա՞րդ կարասցէ Աստուածդ
15 ձեր փրկել զձեզ ի ձեռաց իմոց։ Արդ
մի խաբեսցէ զձեզ Եզեկիաս, եւ մի
յուսացուսցէ զձեզ այդր. մի հաւատայք
դմա. վասն զի ոչ կարացին աստուածք
ամենայն ազգաց եւ թագաւորութեանց
ապրեցուցանել զժողովուրդս իւրեանց ի
ձեռաց իմոց եւ ի ձեռաց հարցն իմոց.

[1] Եբր. բազումս եւ ասպարս [2] Եբր. ժողովեաց զնոսա առ ինքն ի հրապարակ դրան քաղաքին [3] Եբր. Յուդայ եւ առ ամենայն Յուդա որ [4] Եբր. խունկս արկէք

եւ Աստուածդ ձեր ոչ փրկէ զձեզ ի ձե-
16 ռաց իմոց։ Եւ այլ եւս խօսեցան ծա-
ռայք նորա ի Տէր Աստուած եւ յԵզե-
17 կիաս ծառայ նորա։ Եւ թուղթ գրեաց
թշնամանել զՏէր Աստուած Իսրայելի,
եւ ասաց յաղագս նորա, Զոր օրինակ
աստուածք ազգաց երկրի ոչ փրկեցին
զժողովուրդս իւրեանց ի ձեռաց իմոց,
նոյնպէս եւ Աստուածդ Եզեկեայ զժո-
ղովուրդ իւր ոչ ապրեցուսցէ ի ձեռաց
18 իմոց։ Եւ [5]գոչեաց մեծաձայն Հրէարէն
առ ժողովուրդն Երուսաղեմի որ էր ի
վերայ պարսպին, [6]օգնական լինել իւ-
րեանց եւ կործանել զպարիսպն, զի
19 վաղվաղակի" առցեն զքաղաքն։ Եւ
խօսեցան յԱստուածն Երուսաղեմի որ-
պէս յաստուածս ժողովրդոց երկրի, ի
գործս ձեռաց մարդկան։
20 Եւ յաղօթս կացին Եզեկիաս արքայ
եւ Եսայիաս որդի Ամովսայ մարգարէ՝
յաղագս այնորիկ եւ գոչեցին յերկինս։
21 Եւ առաքեաց Տէր հրեշտակ, եւ սա-
տակեաց զամենայն զօրաւոր եւ զպա-
տերազմող, զիշխան եւ զզօրագլուխ ի
բանակի արքային Ասորեստանեայց. եւ
դարձոյց զերեսս իւր ամօթով յերկիրն
իւր, եւ չոգաւ ի տուն աստուածոյն իւ-
րոյ. եւ որք ելեալ էին յորովայնէ նո-
22 րա՝ ընկեցին զնա անդ սրով։ Եւ ապ-
րեցոյց Տէր զԵզեկիաս եւ զբնակիչս Ե-
րուսաղեմի ի ձեռաց Սենեքերիմայ ար-
քային Ասորեստանեայց եւ ի ձեռաց ա-
մենեցունց. եւ հանգոյց զնոսա շուրջա-
23 նակի։ Եւ բազումք բերէին պատարագս
Տեառն յԵրուսաղէմ, եւ ընծայս Եզեկեայ
արքայի Յուդայ. եւ ամբարձաւ առաջի
աչաց ամենայն ազգաց յետ այսորիկ։
24 Յաւուրսն յայնոսիկ հիւանդացաւ Ե-
զեկիաս մերձ ի մահ. եւ յաղօթս ե-
կաց առ Տէր, եւ լուաւ նմա եւ ետ
25 նմա նշան։ Եւ ոչ ըստ հատուցմանն
զոր ետ նմա Աստուած՝ հատոյց անդրէն
Եզեկիաս, այլ բարձրացաւ սիրտ նորա.
եւ եղեւ ի վերայ նորա բարկութիւն,
26 եւ ի վերայ Յուդայ եւ Երուսաղեմի։ Եւ
խոնարհեցաւ Եզեկիաս ի բարձրութենէ
սրտին իւրոյ եւ բնակիչքն Երուսաղեմի,
եւ ոչ եկն ի վերայ նոցա բարկութիւն
Տեառն յաւուրս Եզեկեայ։
27 Եւ եղեւ Եզեկեայ մեծութիւն եւ

[5] Եբր. գոչեցին [6] Եբր. զարհուրեցուցանել զնոսա եւ խռովել զնոսա, զի

փառս բազում յոյժ. եւ արար իւր
գանձս ոսկւոյ եւ արծաթոյ եւ ականց
պատուականաց, եւ խունկս եւ զէնս
28 եւ անօթս ցանկալիս, Եւ քաղաքս
յարմարս ցորենոյ եւ գինւոյ եւ ձիթոյ,
եւ գեղս եւ կայանս ամենայն անասնոց
29 եւ գոմս հօտից։ Եւ քաղաքս զոր շի-
նեաց իւր, եւ պատրաստութիւն խա-
շանց եւ արջառոց բազում. վասն զի
ետ նմա Տէր ստացուածս բազումս յոյժ։
30 Ինքն Եզեկիաս եփից զելս ջրոյն Գեհո-
նի զվերին, եւ ուղղեաց զնա խոնար-
հագոյն յարեւմուտս կողմն քաղաքին
Դաւթի. եւ յաջողեցաւ Եզեկիա յամե-
նայն ի գործս իւր։
31 Եւ այսպէս արար հրեշտակաց իշխա-
նաց որք ի Բաբելոնէ առաքեցան առ նա
հարցանել վասն [1]նորա եւ" նշանաց որ
եղեն ի վերայ երկրի. եւ եթող զնա
Տէր փորձել զնա եւ գիտել թէ զինչ է
ի սրտի նորա։
32 Եւ մնացեալ բանքն Եզեկիայ եւ ո-
ղորմութիւն նորա ահա գրեալ է ի մար-
գարէութեանն Եսայեայ որդւոյ Ամովսայ
մարգարէի, եւ ի գիրս Թագաւորացն
33 Յուդայ եւ Իսրայէլի։ Եւ ննջեաց Ե-
զեկիաս ընդ հարս իւր եւ թաղեցին զնա
ի բարձրաւանդակի գերեզմանաց որդւոցն
Դաւթի. եւ փառս եւ պատիւ ետուն
նմա ի մահուան նորա ամենայն Յուդա եւ
բնակիչք Երուսաղեմի. եւ թագաւորեաց
Մանասէ որդի նորա փոխանակ նորա։

## ԳԼ. ԼԳ

1 Էր ամաց երկոտասանից Մանասէ ի
թագաւորելն իւրում, եւ յիսուն եւ հինգ
2 ամ թագաւորեաց յԵրուսաղէմ։ Եւ ա-
րար չար առաջի Տեառն յամենայն գար-
շութեանց ազգացն զորս սատակեաց
3 Տէր յերեսաց որդւոցն Իսրայէլի։ Եւ
դարձաւ շինեաց զբարձաւանդակս զորս
կործանեաց Եզեկիաս հայրն նորա, եւ
կանգնեաց [2]արձանս Բահաղիմայ. եւ
արար անտառս. եւ երկիր եպագ ամե-
նայն զօրութեան երկնից, եւ ծառա-
4 յեաց նոցա։ Եւ շինեաց [2]սեղան ի տանն
Տեառն, [3]յորում ասաց Տէր՝ ՅԵրուսա-
5 ղէմ եղիցի անուն իմ յաւիտեան։ Շի-
նեաց անդ [2]սեղան ամենայն զօրու-
թեանն երկնի յերկոսեան [4]ի սրահս տանն

[1]Յեբր. գ–լ––ե [2]Եբր. սեղանս [3]Եբր. զորմէ
[4]Եբր. ի գաւիթս

6 Տեառն։ Եւ ինքն անցուցանէր զորդիս
իւր ընդ հուր [5]յերկրին Բենեննամայ", եւ
հմայէր եւ հաւահարց լինէր եւ գի-
թէր. եւ արար վհուկս եւ թովիչս.
բազմացոյց առնել չար առաջի Տեառն
7 առ ի բարկացուցանելոյ զնա։ Եւ դրօշեալ
եւ ձուլածոյ եւ պատկեր զոր արար ի
տանն [6]Տեառն, զորմէ ասաց Աստուած
ցԴաւիթ եւ ցՍաղոմոն որդի նորա, Ի
տանս յայսմ եւ յԵրուսաղէմ զոր ընտ-
րեցի յամենայն ցեղիցն Իսրայէլի՝ եդից
8 զանուն իմ յաւիտեան. Եւ ոչ եւս յա-
ւելից սասանեցուցանել զոտն Իսրայէլի
յերկրէս զոր ետու հարց նոցա, բայց
միայն թէ պահեսցեն առնել զամենայն
որ ինչ պատուիրեցի նոցա, ըստ ամե-
նայն օրինաց եւ սահմանաց եւ իրա-
9 ւանց ի ձեռն Մովսիսի։ Եւ մոլորեցոյց
Մանասէ զՅուդա եւ զբնակիչսն Երու-
սաղեմի առնել չար առաւել քան զա-
մենայն ազգսն զորս եբարձ Տէր յերե-
10 սաց որդւոցն Իսրայէլի։ Եւ խօսեցաւ
Տէր ընդ Մանասէի եւ ընդ ժողովրդեան
նորա, եւ ոչ լուան։
11 Եւ ած Տէր ի վերայ նորա զիշխանս
զօրու արքային Ասորեստանեայց. կա-
լան զնա եւ կապեցին կապանօք եւ տա-
12 րան ի Բաբելոն։ Եւ իբրեւ վտանգեցաւ,
խնդրեաց զերեսս Տեառն Աստուծոյ իւ-
րոյ, եւ խոնարհեցաւ յոյժ յերեսաց Աս-
13 տուծոյ հարցն իւրոց։ Յաղօթս եկաց
առ նա. եւ լուաւ պաչման նորա, եւ
դարձոյց զնա յԵրուսաղէմ ի թագաւո-
րութիւնն իւր. եւ ծանեաւ Մանասէ,
եթէ Տէր՝ նա է Աստուած։
14 Եւ յետ այսորիկ շինեաց պարիսպ ար-
տաքոյ քաղաքին Դաւթի յարեւմտից
[7]ընդ հարաւակողմն" ի հեղեղատին, եւ
ելս [8]դրանցն շուրջանակի յՕփղայ", եւ
բարձրացոյց յոյժ. եւ կացոյց իշխանս
զօրուց յամենայն քաղաքս պարսպաւորս
15 Յուդայ։ Եւ ի բաց եբարձ զաստուածսն
օտարս եւ զդրօշեալսն ի տանէն Տեառն,
եւ զամենայն սեղանսն զորս շինեաց ի
լերին տանն Տեառն եւ յԵրուսաղէմ եւ
16 [9]արտաքոյ քաղաքին։ Եւ ուղղեաց զսե-
ղանն Տեառն, եւ զոհեաց ի վերայ նո-
րա զոհս [10]փրկութեան եւ օրհնութեան.

[5]Եբր. ի հովտին որդւոյն Ենովմայ [6]Եբր. Աստու-
ծոյ [7]Եբր. Գեհոնի [8]Եբր. դրան Ձկանցն, եւ
պատեաց շուրջանակի զՕփաղ [9]Եբր. ընկէց
արտաքոյ [10]Եբր. խաղաղութեան

եւ ասաց ցՅուդաս ծառայել Տեառն Ա-
17 տուծոյ Իսրայէլի։ Բայց ժողովուրդն
տակաւին եւս երթայր ի բարձունսն.
սակայն [1]Տէր Աստուած էր նոցա"։
18 Եւ մնացեալ բանքն Մանասէի, եւ
աղօթք նորա որ առ Աստուած է, եւ
բանք տեսանողացն որք խօսեցան ընդ
նա յանուն Տեառն Աստուծոյ Իսրայե-
19 լի, Ահա են ի բանս [2]աղօթից նորա, եւ
յորս լուան նմա", եւ ամենայն մեղք
նորա եւ ապստամբութիւն նորա, եւ
տեղիքն յորս շինեաց զբարձաւանդակսն
եւ արար անդ անտառս եւ դրօշեալս
յառաջ քան զդառնալն իւրում, ահա
20 գրեալ են ի բանս [3]տեսանողացն։ Եւ
ննջեաց Մանասէ ընդ հարս իւր, եւ
թաղեցին զնա [4]ի դրախտի տանն իւրոյ".
եւ թագաւորեաց փոխանակ նորա Ա-
մովն որդի նորա։
21 Էր ամաց քսան եւ երկուց Ամովն ի
թագաւորելն իւրում, եւ երկուս ամս
22 թագաւորեաց յԵրուսաղէմ։ Եւ արար
չար առաջի Տեառն որպէս արար Մա-
նասէ հայր նորա. եւ ամենեցուն կռոցն
զոր արար հայր նորա Մանասէ՝ զոհեաց
23 Ամովն եւ ծառայեաց նոցա։ Եւ ոչ խո-
նարհեցաւ առաջի Տեառն, որպէս խո-
նարհեցաւ Մանասէ հայր նորա. այլ
[5]որդի նորա Ամովն" յաճախեաց ի մեղս։
24 Եւ յարեան ի վերայ նորա ծառայքն իւր,
25 եւ հարին զնա ի տան իւրում։ Եւ եհար
ժողովուրդ երկրին զյարուցեալսն ի վե-
րայ [6]թագաւորին. եւ թագաւորեցոյց
ժողովուրդ երկրին զՅովսիաս որդի նո-
րա փոխանակ նորա։

## ԳԼ. ԼԴ

1 Էր ութ ամաց Յովսիաս ի թագաւորելն
իւրում, եւ երեսուն եւ մի ամ թագա-
2 ւորեաց յԵրուսաղէմ։ Եւ արար ուղղու-
թիւն առաջի Տեառն. գնաց ի ճանա-
պարհս Դաւթի հօր իւրոյ, եւ ոչ խո-
3 տորեցաւ յաջ եւ ոչ յահեակ։ Եւ յու-
թերորդ ամի թագաւորութեանն իւրոյ,
եւ ինքն էր տակաւին եւս մանուկ,
սկսաւ խնդրել [7]զՏէր Աստուած" Դաւթի
հօր իւրոյ. եւ յերկոտասաներորդ ամի
թագաւորութեանն իւրոյ սկսաւ սրբել
զՅուդա եւ զԵրուսաղէմ ի բարձանցն
4 եւ յանտառացն [8]եւ ի ձուլածոյիցն։ Եւ
[9]կործանեաց գէմ յանդիման իւր զսե-
ղանս Բահաղիմացն եւ [10]զբարձաւան-
դակսն յորոյ վերայ էին. եւ կոտորեաց
զանտառսն", եւ զդրօշեալսն եւ զձու-
լածոյսն փշրեաց եւ մանրեաց եւ ընկէց
յանդիման շիրմացն այնոցիկ որք զոհէին
5 նոցա։ Եւ զոսկերս քրմացն այրեաց ի
վերայ սեղանոցն, եւ մաքրեաց զՅու-
6 դաս եւ զԵրուսաղէմ, Եւ զքաղաքսն
Եփրեմի եւ Մանասէի եւ զՇմաւոնի եւ
զՆեփթաղիմայ, եւ զտեղիսն նոցա շուր-
7 ջանակի։ Եւ ի բաց եհարձ զանտառսն
եւ զբագինսն, եւ զկուռսն փշրեաց
մանր, եւ զամենայն [11]բարձունսն ի բաց
եհարձ յերկրէն Իսրայէլի, եւ դարձաւ
յԵրուսաղէմ։
8 Եւ յամին ութուտասներորդի թագա-
ւորութեանն իւրոյ, յորժամ վախճանեաց
մաքրել զերկիրն եւ [12]զտունն թագաւո-
րութեանն", առաքեաց զՍափան որդի
Ասեղեայ եւ զՄաասիա իշխան քաղա-
քին եւ զՅովախաս որդի Յովաքազայ
զդպիր յիշատակացն իւրոյ, զօրացու-
ցանել զտունն Տեառն Աստուծոյ իւրոյ։
9 Եւ եկին առ Քեղկիաս քահանայ մեծ.
եւ ետ զարծաթն որ մտեալ էր ի տունն
[13]Տեառն, զոր ժողովեցին Ղեւտացիքն
պահապանք դրանն, ի ձեռանէ Մանա-
սէի եւ Եփրեմի [14]եւ իշխանացն", եւ
յամենայն մնացորդացն Իսրայէլի, եւ
յորդւոցն Յուդայ եւ Բենիամենի, եւ
10 բնակչացն Երուսաղեմի։ Եւ ետուն զայն
[15]ի ձեռս որք ունէին զգործն, որք կա-
յին ի տանն Տեառն՝ կազմել եւ զօրա-
11 ցուցանել զտունն. Եւ ետուն հիւսանցն
եւ շինողացն՝ գնել քարինս չարեքան-
կիւնիս մեծս", եւ փայտս ի գերանս՝
յարկանել զտունն զորս քակեցին թա-
12 գաւորքն Յուդայ։ Եւ արքն այնոքիկ
կային հաւատովք ի վերայ գործոյն. եւ

[1]Եբր. Տեառն Աստուծոյ իւրեանց [2]Եբր. թագաւորաց Իսրայէլի, (19) Եւ աղօթք նորա եւ լսելի լինել նորա [3]Կամ, Հոզայ [4]Եբր. ի տան իւրում [5]Եբր. այս Ամովն [6]Եբր. Ամովնի թագաւորին [7]Եբր. զԱստուած

[8]Եբր. եւ ի դրօշելոց եւ [9]Եբր. կործանեցին [10]Եբր. զարձանս արեգական որ ի բարձունս ի վերայ նոցա՝ կոտորեաց, եւ զանտառսն [11]Եբր. արձանս արեգական [12]Եբր. զտունն [13]Եբր. Աստուծոյ [14]Յեբր. պակաս [15]Եբր. ի ձեռս որոց տանէին զգործն, վերակացուաց տանն Տեառն, եւ ետուն զայն որոց գործէին զգործն ի տանն Տեառն ի կազմել եւ զօրացուցանել զտունն, (11) Եւ ետուն հիւսանցն եւ շինողացն գնել քարինս կոփեալս

վերակացուքն նոցա՝ Յէթ եւ Աբդիաս՝
Ղեւտացիք յորդւոցն Մերարեայ , եւ Զա-
քարիաս եւ Մեսողամ՝ յորդւոցն Կահա-
թու , այց առնել . եւ ամենայն Ղեւտացի
որ ոք էր իմաստուն նուագարանօք եր-
13 գոցն ։ Եւ ի վերայ բեռնակրացն , եւ ի
վերայ այնոցիկ որք առնէին զգործն եւ
զպատրաստութիւն գործոյն , եւ ի Ղեւ-
տացւոցն էին դպրապետք եւ դատաւորք
եւ դռնապանք ։
14 Եւ ի հանելն նոցա զարծաթն մտեալ
ի տունն Տեառն , եգիտ Քեղկիաս քա-
հանայ զգիրս օրինացն Տեառն որ ի ձեռն
15 Մովսիսի ։ Պատասխանի ետ Քեղկիաս
եւ ասէ ցՍափան դպրապետ , Գիրս օ-
րինաց գտի ի տանն Տեառն , եւ ետ Քեղ-
16 կիաս զգիրսն ցՍափան ։ Եւ տարաւ Սա-
փան զգիրսն առ արքայ . եւ ետ արքա-
յի [1]զհամար ամենայն տուեալ արծա-
թոյն ի ձեռս ծառայիցն նորա որք առ-
17 նէին զգործն ։ Եւ ձուլեցին՝՝ զարծաթն
գտեալ ի տան Տեառն , եւ ետուն զայն
ի ձեռս վերակացուացն , եւ ի ձեռս այ-
18 նոցիկ որք առնէին զգործն ։ Եւ պատ-
մեաց Սափան դպրապետ արքայի եւ
ասէ , Գիրս օրինաց ետ ցիս Քեղկիաս
քահանայ . եւ ընթերցաւ զայն Սափան
19 առաջի թագաւորին ։ Եւ եղեւ իբրեւ
լուաւ արքայ զբանս օրինացն , պատա-
20 ռեաց զպատմուճանն իւր ։ Եւ պատուի-
րեաց արքայ Քեղկեայ եւ Աքիկամայ
որդւոյ Սափանայ , եւ Աբդիայ որդւոյ
Միքիայ , եւ Սափանայ դպրապետի , եւ
Ասայեայ՝ մանկան արքայի , եւ ասէ ,
21 Երթայք խնդրեցէք ի Տեառնէ վասն իմ
եւ վասն ամենայն մնացելոցս յԻսրա-
յէլէ եւ Յուդայ յաղագս բանից գրոցդ
այդոցիկ որք գտան . վասն զի մեծ
սրտմտութիւն Տեառն բորբոքեալ է ի մեզ .
զի ոչ լուան հարքն մեր զբանս Տեառն
առնել ըստ ամենայնի որ ինչ գրեալ է
22 ի գիրսդ յայդոսիկ ։ Եւ գնաց Քեղկիաս
եւ որոց ասացն արքայ՝ առ Ողդան մար-
գարէ կին Սեղեմայ որդւոյ Թակուաթայ
որդւոյ Եսերայ , որ պահէր [2]զպատուի-
րանսն , եւ ինքն բնակէր յԵրուսաղէմ
ի Մասենա . եւ խօսեցան ընդ նմա ըստ
բանիցն այնոցիկ ։
23 Եւ ասէ ցնոսա , Այսպէս ասէ Տէր Աս-
տուած Իսրայելի . Ասասջիք ցայրն որ
24 առաքեաց զձեզ առ իս , Այսպէս ա-
սէ Տէր . Ահա ես ածեմ չարիս ի վերայ
տեղւոյդ [3]այդորիկ , զամենայն բանս
գրեալս ի գիրսդ զոր ընթերցան առաջի
25 արքայիդ Յուդայ . Փոխանակ զի թողին
զիս եւ [4]զոհեցին աստուածոց օտարաց ,
զի բարկացուցանիցեն զիս գործովք
ձեռաց իւրեանց , եւ [5]բորբոքեցաւ
սրտմտութիւն իմ ի տեղւոջդ յայդմիկ ,
26 եւ ոչ եւս շիջցի ։ Եւ ցթագաւորն Յու-
դայ որ առաքեաց զձեզ խնդրել զՏէր ,
այսպէս ասասջիք ցնա . Այսպէս ասէ
Տէր Աստուած Իսրայելի . Զբանսդ զոր
27 լուար դու , Եւ պատկառեաց սիրտ քո ,
եւ խոնարհեցար առաջի երեսաց իմոց
ի լսել զբանս իմ ի վերայ տեղւոյդ այ-
դորիկ եւ ի վերայ բնակչացդ դորա . եւ
դու խոնարհեցար առաջի իմ , պատա-
ռեցեր զպատմուճանս քո , եւ լացեր
յանդիման իմ , եւ ես լուայ , ասէ Տէր ։
28 Ահա յաւելից զքեզ առ հարս քո , եւ
դիցեն զքեզ ի շիրիմս քում խաղաղու-
թեամբ , եւ ոչ տեսցեն աչք քո զամե-
նայն չարիսն զոր ես ածից ի վերայ տեղ-
ւոյդ այդորիկ եւ ի վերայ բնակչաց դո-
րա ։ Եւ ետուն թագաւորին զբանս զայ-
սոսիկ ։
29 Եւ առաքեաց արքայ եւ ժողովեաց
30 [6]զծերսն Յուդայ եւ զԵրուսաղեմի ։ Եւ
ել արքայ [7]Յուդայ ի տունն Տեառն ,
եւ ամենայն Յուդաս եւ բնակիչք Ե-
րուսաղեմի , եւ քահանայքն եւ Ղեւ-
տացիք , եւ ամենայն ժողովուրդն ի մե-
ծէ մինչեւ ի փոքր , եւ ընթերցաւ յա-
կանջս նոցա զամենայն բանս [8]կտակին
31 գտելոյ ի տանն Տեառն ։ Եւ [9]յարեաւ
թագաւորն , եկաց ի վերայ սեանն՝՝ , եւ
եդ ուխտ առաջի Տեառն երթալ զհետ
Տեառն , պահել զպատուիրանս նորա եւ
զվկայութիւնս նորա եւ զհրամանս նո-
րա ի բոլոր սրտէ եւ ի բոլոր անձնէ ,
[10]զբանս ուխտին զգրեալսն ի գիրսն յայնո-
32 սիկ ։ Եւ կացոյց զամենեսեան զգտեալսն
յԵրուսաղէմ եւ ի Բենիամին . եւ արա-
րին բնակիչքն Երուսաղեմի [11]ուխտ ի
33 տանն՝՝ Աստուծոյ հարցն իւրեանց ։ Եւ

[1] Եբր. զհամար, և ասէ, Զամենայն ինչ որ տուաւ ի ձեռս ծառայից քոց՝ արարին նոքա . (17) Եւ թափեցին [2] Եբր. զպատմուճանն

[3] Եբր. եւ ի վերայ բնակչաց նորա [4] Եբր. խունկս արկին [5] Եբր. բորբոքեսցի [6] Եբր. զամենայն ծերսն [7] Յ Եբր. [illegible] [8] Եբր. գրոց կտակին [9] Եբր. եկաց թագաւորն ի տեղւոջ իւրում [10] Եբր. առնել զբանս [11] Եբր. ըստ ուխտին Աստուծոյ.

ի բաց եբարձ Յովսիա զամենայն զգար-
շելիս յամենայն երկրէ, որ էր որդւոցն
Իսրայէլի. և արար ամենայն գտելոցն
[1]յԵրուսաղէմ և" յԻսրայէլի ծառայել
Տեառն Աստուծոյ իւրեանց. զամենայն
աւուրս իւր ոչ [2]խոտորեցաւ ի հետոց
Տեառն Աստուծոյ հարցն [3]իւրոց։

## ԳԼ. ԼԵ

1 Եւ արար [4]Յովսիաս զպասեքն Տեառն
[1]Աստուծոյ իւրոյ". և զենին զպասեքն
ի չորեքտասաներորդում աւուր ամսոյն
2 առաջնոյ։ Եւ կացոյց զքահանայսն ի
վերայ պահպանութեան իւրեանց, և
զօրացոյց զնոսա ի գործս տանն Տեառն։
3 Եւ ասէ [5]ցՂեւտացւոցն և ցզօրաւորսն
յամենայն Իսրայէլի, սրբել զնոսա Տեառն.
և եդին" զտապանակն սրբութեան ի
տանն զոր շինեաց Սողոմոն որդի Դաւ-
թի արքայի Իսրայէլի. [1]և ասէ ար-
քայ," Ոչ է ձեզ բառնալ ի վերայ ուսոց
և ոչ ինչ. արդ պաշտեցէք զՏէր Աս-
տուած ձեր և զժողովուրդ նորա զԻս-
4 րայէլ. Եւ պատրաստ լերուք ըստ տանց
տոհմից ձերոց և ըստ օրինաց պաշ-
տաման ձերոյ, ըստ գրոց Դաւթայ ար-
քայի Իսրայէլի, և [6]ի ձեռն թագաւո-
5 րին" Սողոմոնի որդւոյ նորա։ Եւ կա-
ցէք ի տաճարին ըստ որոշման տանց
տոհմից ձերոց, առաջի եղբարց ձերոց
և որդւոց ժողովրդեան ձերոյ. և բաժ-
6 նի տան ցեղին Ղեւտացւոց. Եւ զենե-
ցէք զպասեքդ, և [7]պատրաստեցէք
զսրբութիւնսդ" եղբարց ձերոց, առնել
ըստ բանին Տեառն որ ի ձեռն Մովսի-
7 սի։ Եւ սկսաւ Յովսիաս տալ որդւոց
ժողովրդեանն խոյս և որոջս և նոխազս
յորդւոց այծեաց, զամենայն ի պասեքն.
և զամենեսեան որ ինչ գտաւ՝ թուով
երեսուն հազար, և զուարակս երեք
հազար. այսոքիկ ի ստացուածոց թա-
8 գաւորին։ Եւ իշխանքն նորա սկսան
տալ ժողովրդեանն և քահանայիցն և
Ղեւտացւոցն. [1]և ետուն" Քեղկիաս և
Զաքարիաս և Յէքիէլ, իշխանք տանն
Աստուծոյ, քահանայիցն ետուն ի պա-
սեքն խոյս և որոջս և նոխազս երկու
հազար և վեց հարիւր, և զուարակս
9 երեք հարիւր։ Եւ Քոնենիաս [1]և Բա-
նեաս" և Սամէաս և Նաթանայէլ եղ-
բարք նորա, և Ասաբիաս և Յէիէլ և
Յովզաբադ իշխանք Ղեւտացւոցն, սկսան
տալ ցՂեւտացիսն ի պասեքն խոյս հինգ
հազար և զուարակս հինգ հարիւր։
10 Եւ ուղղեցաւ պաշտօնն, և կացին քա-
հանայքն ի կարգն իւրեանց և Ղեւ-
տացիքն ի դասուցմանն իւրեանց՝ ըստ
11 պատուիրանի արքային։ Եւ զենին զպա-
սեքն, և հեղին քահանայքն զարիւնն
ի ձեռաց իւրեանց, և Ղեւտացիքն
12 [8]յօշեցին, Եւ պատրաստեցին զողջա-
կէզսն տալ նոցա իւրաքանչիւր ումեք
ըստ դասուցմանն, վասն տանց տոհ-
մից որդւոց ժողովրդեանն մատուցանել
Տեառն, որպէս և գրեալ է ի գիրս օ-
րինացն Մովսէսի։ Նոյնպէս և [9]յառա-
13 ւօտինն։ Եւ խորովեցին զպասեքն հրով
ըստ օրինին, և զսրբութիւնն եփեցին
կաթսայիւք և սանիւք, և [10]յաջողե-
ցաւ. և ընթացան առ ամենեսեան որ-
14 դիս ժողովրդեանն։ Եւ յետ պատրաս-
տելոյն նոցա և քահանայիցն, վասն զի
քահանայքն էին մատուցանել զճարպսն
և զողջակէզսն մինչև ի գիշերն, և
Ղեւտացիքն պատրաստեցին իւրեանց
և եղբարցն իւրեանց որդւոցն Ահարո-
15 նի։ Եւ սաղմոսանուագքն որդիք Ասա-
փայ ի կարգին իւրեանց ըստ պատուի-
րանին Դաւթայ, և [11]Ասափ և Եման և
Իդիթուն՝ մարգարէք արքային, և իշ-
խանք և" դռնապանք դրանն և դրան.
և ոչ էր նոցա [12]հնար շարժել" ի պաշ-
տամանէ սրբութեանն. վասն զի եղբարք
նոցա Ղեւտացիքն պատրաստեցին նո-
16 ցա։ Եւ ուղղեցաւ և պատրաստեցաւ
ամենայն պաշտօնն Տեառն յաւուրն յայն-
միկ՝ առնել զպասեքն և մատուցանել
զողջակէզսն ի վերայ սեղանոյն Տեառն,
ըստ պատուիրանին Յովսիայ արքայի։
17 Եւ արարին որդիքն Իսրայէլի որք գտան
անդ՝ զպասեքն ի ժամանակին յայնմ,
18 և զտօն անխմորիցն զեւթն օր։ Եւ ոչ
երբեք եղեւ պասեք նման նմա յԻսրա-
յէլի յաւուրցն Սամուէլի մարգարէի,
և ամենայն թագաւորքն Իսրայէլի ոչ

---

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. խոտորեցան [3] Եբր. իւրեանց [4] Եբր. Յովսիաս յԵրուսաղէմ [5] Եբր. ցՂեւտացիսն, ուսուցիչս ամենայն Իսրայէլի, սրբեալս Տեառն, Դիք [6] Եբր. ըստ գրոց [7] Եբր. սրբեցարուք և պատրաստեցէք վասն

[8] Եբր. մորթեցին [9] Եբր. առնէին զուարակացն [10] Եբր. տապակօք [11] Եբր. Ասափայ և Եմանայ և Իդիթունի, տեսանողի արքային, և [12] Եբր. պիտոյ ի բաց կալ

արարին պասեք որպէս արար Յովսիաս ,
եւ քահանայքն եւ Ղեւտացիք , եւ ա-
մենայն Յուդաս եւ Իսրայէլ որ գտաւ
19 անդ եւ բնակիչքն Երուսաղեմի ։ Արա-
րին Տեառն յութուտասներորդ ամի թա-
գաւորութեանն [1]Յովսիայ ։ Եւ զվհուկս
եւ զգէտս եւ զգիւթս եւ զկուռս եւ
զկախարդս , որք էին յերկրին Յուդայ
եւ յԵրուսաղէմ , ի բաց եբարձ եւ այ-
րեաց հրով արքայ Յովսիաս , զի հաս-
տատեսցէ զբանս օրինացն զգրեալսն ի
գիրս զոր եգիտ Քեղկիաս քահանայ ի
տանն Տեառն ։ Նման նմա ոչ եղեւ յա-
ռաջ քան զնա , որ դարձաւ առ Տէր Ա-
ստուած ի բոլոր սրտէ իւրմէ եւ ի բոլոր
անձնէ իւրմէ եւ յամենայն զօրութենէ
իւրմէ , ըստ ամենայն օրինաց Մովսիսի .
եւ յետ նորա ոչ ոք յարեաւ նման նմա ։
Սակայն ոչ դարձաւ Տէր ի բարկութենէ
սրտմտութեան իւրոյ մեծէ , զոր բար-
կացաւ սրտմտութեամբ Տէր ի վերայ
Յուդայ , ամենայն բարկութեամբքն ո-
րովք բարկացոյց զնա Մանասէ . եւ ա-
սաց Տէր , Այլ եւ զՅուդաս մերժեցից
յերեսաց իմոց , որպէս մերժեցի զԻս-
րայէլ . եւ ի բաց արարից զքաղաքն զոր
ընտրեցի զԵրուսաղէմ , եւ զտունն զոր-
20 մէ ասացի՝ Եղիցի անուն իմ անդ ։ Եւ
ել Փարաւոն" Նեքաւով արքայ Եգիպ-
տոսի [2]ի վերայ արքային Ասորեստա-
նեայց", առ գետովն Եփրատայ . եւ գնաց
21 արքայ Յովսիա ընդդէմ նորա ։ Եւ ա-
ռաքեաց առ նա հրեշտակս , եւ ասէ ,
Զի՞նչ կայ իմ եւ քո , արքայ Յուդայ .
ոչ եմ եկեալ ի վերայ քո այսօր [3]պա-
տերազմ առնել". եւ Աստուած ասաց
փութալ ինձ . զգոյշ լեր յԱստուծոյ որ
է ընդ իս , մի՛ գուցէ ապականիցէ զքեզ ։
22 Եւ ոչ դարձոյց Յովսիա զերեսս իւր ի
նմանէ , այլ պատերազմել ընդ նմա [4]զօ-
րացաւ . եւ ոչ լուաւ բանիցն Նեքաւո-
վայ որ ի բերանոյ Տեառն , եւ եկն պա-
23 տերազմել ի դաշտին Մակեդդովայ ։ Եւ
հարին աղեղնաւորքն զարքայ Յովսիաս .
եւ ասէ արքայ ցծառայս իւր , Հանէք
զիս աստի , վասն զի վանդեցայ յոյժ ։
24 Եւ հանին զնա ծառայքն նորա ի կա-
ռացն իւրոց , եւ եդին զնա ի կառսն
յերկրորդս՝ որ էր նորա , եւ տարան զնա
յԵրուսաղէմ . եւ մեռաւ եւ թաղեցաւ
ընդ հարս իւր . եւ ամենայն Յուդաս
եւ Երուսաղէմ սուգ առին ի վերայ Յով-
25 սեայ ։ Եւ ասաց ողբս Երեմիաս ի վե-
րայ Յովսեայ , եւ ամենայն [5]իշխանքն
արք եւ կանայք , ասացին զողբսն ի
վերայ Յովսեայ մինչեւ ցայսօր , եւ ե-
տուն զայն իբրեւ հրամանաւ ի մէջ Իս-
րայէլի . եւ ահա գրեալք են ի Ճառս
ողբոցն ։
26 Եւ [6]էին բանքն Յովսեայ եւ յոյս նո-
27 րա գրեալ" յօրէնսն Տեառն , Եւ մնա-
ցեալ բանքն նորա առաջինք եւ վեր-
ջինք՝ ահա գրեալ են ի գիրս Թագաւո-
րացն Իսրայէլի եւ Յուդայ ։

## ԳԼ . ԼԶ

1 Եւ առ ժողովուրդ երկրին զՅովաքազ
որդի Յովսեայ , եւ [7]օծին զնա եւ" կա-
ցուցին զնա թագաւոր փոխանակ հօր
2 նորա յԵրուսաղէմ ։ Որդի քսան եւ ե-
րից ամաց էր Յովաքազ ի թագաւորելն
իւրում . եւ զերիս ամիսս թագաւորեաց
յԵրուսաղէմ . [8]եւ անուն մօր նորա Ա-
միտալ , դուստր Երեմիայի ի Ղոմնայ .
եւ արար չար առաջի Տեառն՝ ըստ ա-
մենայնի զոր ինչ արարին հարքն նորա ։
3 Եւ կալեաց զնա Փարաւոն Նեքաւով
ի Դեբղաթա՝ յերկրին Եմաթայ , ոչ եւս
թագաւորել նմա յԵրուսաղէմ . եւ տա-
րաւ զնա արքայն յԵգիպտոս". եւ արկ
ի վերայ երկրին հարկ հարիւր տաղանդ
4 արծաթոյ, եւ տաղանդ մի ոսկւոյ։ Եւ [9]կա-
ցոյց Փարաւոն Նեքաւով զԵղիակիմ որ-
դի Յովսեայ արքայի Յուդայ փոխանակ
Յովսեայ հօր նորա". եւ փոխեաց զա-
նուն նորա Յովակիմ . եւ զՅովաքազ
եղբայր նորա առ [7]Փարաւոն Նեքաւով ,
եւ տարաւ յԵգիպտոս . [7]եւ մեռաւ անդ ։
Եւ զարծաթն եւ զոսկին ետուն Փարա-
ւոնի . յայնմ հետէ սկսաւ տալ հարկս
երկրին . եւ ետուն զարծաթն ըստ բե-
րանոյ Փարաւոնի . եւ յիւրաքանչիւր
ումեքէ ըստ զօրութեան իւրոյ պահան-

[1] Եբր. Յովսեայ զպասէքն (20) Յետ ամենայնի այսորիկ իբրեւ պատրաստեաց Յովսիաս զտունն, ել [2] Եբր. պատերազմել ի Քարքեմիս [3] Եբր. այլ ի վերայ տանն ընդ որում է իմ պատերազմ [4] Եբր. ծպտեցաւ , կամ, խնդրեաց

[5] Եբր. երգեցողք [6] Եբր. Մնացորդք բանիցն Յովսեայ եւ ողորմութիւնք նորա որպէս գրեալ են [7] Յեբր. պակասի [8] Եբր. (3) Եւ ընկէց զնա արքայն Եգիպտացւոց յԵրուսաղէմ [9] Եբր. Թագաւորեցոյց արքայն Եգիպտացւոց զԵղիակիմ եղբայր նորա ի վերայ Յուդայ եւ Երուսաղեմի

ջէին զարծաթն եւ զոսկին ի ժողովրդե-
նէ երկրին, տալ զայն Փարաւոնի Նե-
քաւովայ:"
5 Էր քսան եւ հինգ ամաց Յովակիմ ի
թագաւորելն իւրում, եւ զմետասան ամ
թագաւորեաց յԵրուսաղէմ. [1]եւ անուն
մօր նորա Զեկքովրա դուստր Ներեայ
ի Ռամայ. եւ արար չար առաջի Տեառն
ըստ ամենայնի զոր ինչ արարին հարքն
նորա: Յաւուրս նորա ել Նաբուքոդոնո-
սոր արքայ Բաբելոնի յերկիրն. եւ ծա-
ռայեաց նմա ամս երիս, եւ ապստամ-
բեաց ի նմանէ: Եւ առաքեաց Տէր զՔաղ-
դեացիսն եւ զաւազակսն Ասորեաց, եւ
զաւազակսն Մովաբացւոց եւ որդւոցն
Ամոնայ եւ Սամարիայ: Եւ ի բաց կա-
ցին յետ բանիցս այսոցիկ ըստ բանի
Տեառն ի ձեռն ծառայից իւրոց մարգա-
րէից. սակայն սրտմտութիւն ի Տեառ-
նէ էր ի վերայ Յուդայ, ի բաց բառնալ
զնա յերեսաց իւրոց, վասն մեղացն Մա-
նասէի յամենայնի զոր ինչ արար, եւ
անպարտ արեանցն զոր եհեղ Մանասէ,
եւ ելից զԵրուսաղէմ անպարտ արեամբ.
եւ ոչ կամեցաւ Տէր սատակել զնոսա":
6 Եւ ել ի վերայ նորա Նաբուքոդոնո-
սոր արքայ Բաբելոնի, եւ կապեաց զնա
պղնձի կապանօք [2]եւ տարաւ" զնա ի
7 Բաբելոն: Եւ մասն ինչ ի սպասուց տանն
Տեառն տարաւ ի Բաբելոն, եւ եդ զայն
8 ի տաճարին իւրում որ ի Բաբելոն: Եւ
մնացեալ բանքն Յովակիմայ եւ [3]ամե-
նայն ինչ զոր արար", ո՞չ ահաւասիկ գրեալ
են նոքա ի գիրս բանից [4]աւուրց թա-
գաւորացն Յուդայ: Եւ ննջեաց Յո-
վակիմ ընդ հարս իւր, եւ թաղեցաւ ի
Գանոզա՛ ընդ հարս իւր." եւ թագա-
ւորեաց Յեքոնիա որդի նորա փոխա-
նակ նորա:
9 Որդի ութեւտասան ամաց էր Յեքոնիաս
ի թագաւորելն իւրում, եւ ամիսս երիս
եւ աւուրս տասն թագաւորեաց յԵրու-
սաղէմ եւ արար չար առաջի Տեառն:
10 Եւ ի դառնալ տարւոյն առաքեաց ար-
քայն Նաբուքոդոնոսոր եւ տարաւ զնա
ի Բաբելոն, հանդերձ ցանկալի սպասուք
տանն Տեառն. եւ թագաւորեցոյց զՍե-
դեկիաս եղբայր հօր նորա ի վերայ Յու-
դայ յԵրուսաղէմ:
11 Ամաց քսան եւ միոյ էր Սեդեկիաս
ի թագաւորելն իւրում, եւ մետասան
12 ամ թագաւորեաց յԵրուսաղէմ: Եւ ա-
րար չար առաջի Տեառն Աստուծոյ իւ-
րոյ. ոչ պատկառեաց յերեսաց Երեմիա-
յի մարգարէի [5]եւ ի բանիցն" Տեառն:
13 Եւ յապստամբելն նորա ի Նաբուքոդո-
նոսորայ արքայէ, եւ անցանելոյ զերդ-
մամբքն զոր երդմնեցոյց զնա յԱստուած
իւր, խստացոյց զպարանոց իւր, եւ
զսիրտ իւր կարծրացոյց՝ ոչ եւս դառ-
14 նալ առ Տէր Աստուած Իսրայէլի: Եւ
ամենայն [6]փառաւորքն Յուդայ, եւ քա-
հանայք" եւ ժողովուրդք երկրին յա-
ճախեցին անօրինել անօրէնութիւնս ըստ
գարշելեաց ազգացն, եւ պղծեցին զտունն
15 [7]Տեառն յԵրուսաղէմ: Եւ առաքեաց Տէր
Աստուած հարցն նոցա ի ձեռն մարգա-
րէիցն [8]կանխեալ առաքեաց զհրեշտակս
իւր". վասն զի խնայէր ի ժողովուրդն
16 իւր եւ ի սրբութիւնն իւր: Արհամար-
հէին զհրեշտակս նորա, եւ անգոսնէին
զբանս նորա, եւ խաղ առնէին զմար-
գարէսն. մինչեւ եղեւ բարկութիւն
Տեառն ի վերայ ժողովրդեան իւրոյ, եւ
ոչ եւս գոյր այնուհետեւ նոցա բժշկու-
17 թիւն: Եւ ած ի վերայ նոցա զթագա-
ւորն Քաղդէացւոց. կոտորեաց զերի-
տասարդս նոցա սրով ի տան սրբութեան
իւրոյ, եւ ոչ խնայեաց [9]ի Սեդեկիաս.
կուսանաց նոցա ոչ ողորմեցաւ, եւ զծերս
նոցա զամենեսեան մատնեաց ի ձեռս
18 նոցա": Եւ զամենայն սպաս տանն Աս-
տուծոյ զմեծամեծս եւ զփոքունս, եւ
[10]զամենայն գանձն" արքային եւ մեծա-
մեծացն, զամենայն տարաւ ի Բաբելոն:
19 Եւ այրեաց զտունն Տեառն, եւ կործա-
նեաց զպարիսպն Երուսաղեմի, եւ զա-
պարանսն որ ի նմա այրեաց հրով, եւ
զամենայն անօթ գեղեցիկ ապականեաց:
20 Եւ գերեաց [11]զմնացորդսն ի Բաբելոն.
եւ էին անդ՝ նմա եւ որդւոց նորա ի
ծառայութիւն, մինչեւ ի թագաւորու-

[1] Օրբ. եւ արար չար յաչս Տեառն Աստուծոյ իւրոյ [2] Օրբ. տանել [3] Օրբ. գործութիւնքն նորա զորս արար եւ որ ինչ գտաւ ի նմա [4] Օրբ. թագաւորացն Իսրայելի եւ Յուդայ

[5] Օրբ. ի բերանոյ [6] Օրբ. իշխանք քահանայից [7] Օրբ. Տեառն զոր սրբեալ էր [8] Օրբ. կանխելով եւ առաքելով [9] Օրբ. երիտասարդին եւ կուսին, ծերոյն եւ ալեւորին. զամենեսեան մատնեաց ի ձեռս նորա [10] Օրբ. զգանձս տանն Տեառն, եւ զգանձս [11] Օրբ. զմնացեալսն ի սրոյ

21 թիւնն [1]Մարաց. Առ ի լնուլ բանին Տեառն
ի բերանոյ Երեմիայի, մինչեւ ընկալաւ
երկիրն զշաբաթս իւր. եւ շաբաթանա-
լով զամենայն աւուրս աւերածոյն իւրոյ,
շաբաթացաւ ի կատարումն ամացն եւ-
թանասնից:
22 Ցառաջնում ամին Կիւրոսի արքայի
Պարսից, յետ լնլոյ բանին Տեառն ի բե-
րանոյ Երեմիայի, զարթոյց Տէր զհոգի
Կիւրոսի Պարսից արքայի. եւ պատուի-
րեաց քարոզել յամենայն թագաւորու-
թեանն իւրում գրով եւ ասել,
23 Այսպէս ասէ Կիւրոս արքայ Պարսից.
Զամենայն թագաւորութիւնս երկրի ետ
ինձ Տէր Աստուած երկնից. եւ Նա պա-
տուիրեաց ինձ շինել իւր տուն յԵրու-
սաղէմ ի Հրէաստանի: Որ ոք ի ձէնջ
յամենայն ժողովրդենէ նորա իցէ, Տէր
Աստուած իւր եղիցի ընդ նմա, եւ ելցէ:

[1]Եբր. Պարսից

# Ե Զ Ր

## ԳԼՈՒԽ Ա

1 Յ**ԱՌԱՋՆՈՒՄ** ամին Կիւրոսի ար-
քային Պարսից, ի կատարել բանին
Տեառն ի բերանոյ Երեմիայի մարգարէի,
զարթոյց Տէր զոգին Կիւրոսի թագա-
ւորին Պարսից, եւ ետ հրաման պա-
տուիրանի յամենայն թագաւորութեան
իւրում, եւ գրեաց առ ամենեսեան օ-
րինակ զայս.
2 Այսպէս ասէ Կիւրոս թագաւոր Պար-
սից. Զամենայն թագաւորութիւնս երկ-
րի ետ ինձ Տէր Աստուած երկնից, եւ
նա հրամայեաց ինձ առնել եւ շինել նմա
3 տաճար յԵրուսաղէմ Հրէաստանի։ Ո ոք
եւ իցէ ի ձեզ յամենայն ժողովրդեան
Տեառն, ընդ որում է Աստուած նորա
ընդ նմա, ելցէ յԵրուսաղէմ Հրէաստա-
նի եւ շինեսցէ զտուն Տեառն Աստուծոյ
Իսրայելի. եւ ինքն Աստուած որ բնա-
կեալ է յԵրուսաղէմ՝ եղիցի ընդ նմա։
4 [1]Եւ զամենայն պատրաստութիւն իւր
առցէ ընդ իւր, եւ տարցի ի տեղւոյն յայն
ուր ինքն բնակեսցէ. եւ առցէ այր ընդ
իւր զամենայն կազմած իւր՝ որ ինչ եւ
իցէ, արծաթեղէն եւ ոսկեղէն, եւ զայլ
կահ եւ զանասուն՝ համզերձ ընկերօք
իւրեանց առցեն ընդ իւրեանս՝՝ ի պատ-
րաստութիւն տաճարին Տեառն Աստու-
ծոյ յԵրուսաղէմ։
5 Եւ յարեան իշխանք հայրապետաց որդ-
ւոցն Յուդայ եւ Բենիամինի, եւ քա-
հանայքն եւ Ղեւտացիք ամենեքեան՝
զորոց զարթոյց Տէր Աստուած զոգիս
նոցա ելանել եւ շինել զտաճարն Տեառն
6 Աստուծոյ յԵրուսաղէմ։ Եւ ամենեքեան
որ շուրջ էին զնոքօք՝ օգնէին եւ զօ-
րացուցանէին զձեռս նոցա՝ տալով ար-
ծաթ եւ ոսկի եւ զկահ եւ զանասուն,
եւ [2]ընծայիւք եւ պատարագօք լցուցա-
նէին զնոսա՝՝։
7 Եւ թագաւորն Կիւրոս ետ բերել զամե-
նայն սպաս եւ զկահ տաճարին Տեառն
զոր ած Նաբուքոդոնոսոր յԵրուսաղե-
մէ, եւ ետ ի պահ ի տուն աստուածոյ
8 իւրոց. Ետ բերել զայն ամենայն Կիւրոս
թագաւոր Պարսից ի ձեռն Միթրադա-
տայ գանձաւորի, եւ համարեալ՝ ետ
9 [3]Սամանասար իշխան Յուդայ։ Եւ այս
է թիւ համարուցն. [4]զոհարանք ոսկե-
ղէնք՝ երեսուն, եւ [4]զոհարանք սպա-
սուն արծաթեղէնք՝ [5]հազար քսան եւ
10 ինն, Սկաւառակք ոսկիք՝ երեսուն, եւ
11 [6]արծաթեղէնք՝ կրկին՝՝ հազար։ Ամե-
նայն կահք ոսկեղէնք եւ արծաթեղէնք՝
հինգ հազար եւ չորեք հարեւր։ [7]Եւ ընդ
ամենայն որ էին ընդ Սամանասարայ եւ՝՝
ընդ ելելոյ գերութեանն ի Բաբելոնէ
յԵրուսաղէմ։

## ԳԼ. Բ

1 Այս են [8]որդիքն Իսրայելի՝ ըստ իւրաքան-
չիւր տեղեացն՝՝ որ ելանէին ի գերու-
թենէն զոր գերեացՆաբուքոդոնոսոր թա-
գաւոր Բաբելացւոց ի Բաբելոն, [9]զորս եւ
պարձոյց Կիւրոս ի Բաբելոնէ՝՝ յԵրուսաղէմ
եւ ի Հրէաստան՝ այր յիւրաքանչիւր քա-
2 ղաք։ Եւ որք էին եկեալ ընդ Զորաբաբելի,
Յեսու, Նէեմի, Սարէաս, Հռէլիղեաս,
Մարդոքէոս, Բաղասան, Մասփար, Բա-
գուար, Հռէում, Բաանա։ Այս է թիւ
3 ժողովրդեան որդւոցն Իսրայելի. Որդիք
Փարոսայ՝ երկու հազար հարեւր եւթանա-
4 սուն եւ երկու, Որդիք Սափատայ՝ [10]չո-

[1] Եբր. Եւ ամենայն մնացորդ ի տեղիս տեղիս յորս պանդխտեալ իցէ. օգնեսցեն նմա արք տեղւոյն նորա ոսկւով եւ արծաթով, կահիւք եւ անասնովք. Թող զկամաւոր ընծայս,

[2] Եբր. ընծայս պատուականս, թող զամենայն նուէր կամաւոր [3] Եբր. ցՍասբասար [4] Եբր. կոնքք [5] Եբր. հազար, դանակք [6] Եբր. սկաւառակք արծաթեղէնք երկրորդ կարգի չորեքհարեւր տասն, այլ եւս ամանք [7] Եբր. Զամենայն եհան Սասբասար [8] Եբր. որդիք գաւառացն [9] Եբր. եւ որ դարձան [10] Եբր. երեք

րեք հարեւր եւթանասուն եւ երկու.
5 Որդիք Արեայ՝ եւթն հարեւր եւթա-
6 նասուն եւ [1]վեց, Որդիք [2]Նեփթաղի-
մի Մովաբայեցւոյ եւ՞ որդւոց Յեսուայ
եւ Յովաբայ՝ երկու հազար ութ հա-
7 րեւր եւ երկոտասան, Որդիք Յեղամայ՝
[3]երկու հազար երկերիւր յիսուն եւ չորս,
8 Որդիք Զատթուայ՝ ինն հարեւր քառա-
9 սուն եւ հինգ, Որդիք [4]Քորրայ՝ եւթն
10 հարեւր [5]յիսուն, Որդիք Բանեայ՝ [6]հա-
11 զար քառասուն եւ ութ՞, Որդիք Բի-
բեայ՝ [7]ութ հարեւր քսան եւ երեք,
12 Որդիք [8]Արգեայ՝ երեք հազար երեք հա-
13 րեւր՞ քսան եւ երկու, Որդիք Ադոնի-
կամայ՝ [9]ութ հարեւր եւթանասուն եւ
14 եւթն՞, Որդիք [10]Բաւերայ՝ երկու հազար
15 [11]ութ հարեւր՞ եւ վեց, Որդիք Ադդի-
նեայ՝ չորեք հարեւր յիսուն եւ չորս,
16 Որդիք Աթեր Եզեկեայ՝ իննսուն եւ [12]վեց,
17 Որդիք Բեսսեայ՝ երեք հարեւր քսան եւ
18 երեք, Որդիք Յարովայ՝ հարեւր եւ եր-
19 կոտասան, Որդիք Ասում՝ երկերիւր
20 քսան եւ երեք, Որդիք Գաբերի՝ ինն-
21 սուն եւ հինգ, Որդիք Բեթղեհեմ՝ հա-
22 րեւր քսան եւ երեք, [13]Որդիք Նետո-
23 փայ՝ յիսուն եւ վեց, [13]Որդիք Անաթովթ՝
24 հարեւր քսան եւ ութ, Որդիք Ազմովթ
25 քառասուն եւ երկու, Որդիք Կարիա-
թարիմ, Քափիրայ եւ Բերովթ՝ եւթն հա-
26 րեւր քառասուն եւ երեք, Որդիք Ռա-
մայ եւ [14]Գայեայ՝ հազար՞ քսան եւ
27 մի, [13]Որդիք Մաքմաս՝ հարեւր քսան եւ
28 երկու, [13]Որդիք Բեթելայ եւ [15]Յեգեայ՝
29 չորեք հարեւր՞ քսան եւ երեք, Որդիք
30 Նաբովթ՝ յիսուն եւ երկու, Որդիք Մա-
31 կեփո՝ հարեւր յիսուն եւ վեց, Որդիք
[16]Եղեմարայ՝ հազար երկերիւր յիսուն եւ
32 չորս, Որդիք Իրամ՝ երեք հարեւր քսան,
33 Որդիք Ղիդդոն, Ղոդադիդ եւ Ոնայ՝ եւթն
34 հարեւր քսան եւ հինգ, Որդիք Երիքովայ՝
35 երեք հարեւր քառասուն եւ հինգ, Որդիք
Սենեայ՝ երեք հազար վեց հարեւր երեսուն
36 [17]Եւ որդիք քահանայիցն՞ որդիք Յե-
դուայ տանն Յեսուայ [3]Յովսեդեկեանց՝
37 ինն հարեւր եւթանասուն եւ երեք, Որ-
38 դիք Եմերայ հազար յիսուն եւ երկու, Որ-
դիք Փասուրայ հազար երկերիւր քառա-
39 սուն եւ եւթն, Որդիք Երեմայ հազար
[18]եւթն հարեւր՞։
40 Ղեւտայիքն, որդիք Յեսու եւ Կադմիէլ
որդւոցն Ովդուեայ՝ եւթանասուն եւ
չորք։
41 Եւ որ էին սաղմոսասացք եւ երգեցիկք,
որդիքն Ասափայ՝ հարեւր քսան եւ ութ։
42 Որդիք դռնապանացն, որդիք Սեղում,
որդիք Ատեր, որդիք Տեղմոն, որդիք
Ակուբ, որդիք Ատիտայ, որդիք Սուբա-
յի, ամենեքեան հարեւր երեսուն եւ ինն։
43 Եւ [19]Նաթանեայ՝ որդիք Սուադայ, որդիք
44 Ասուփայ, որդիք Տաբաւթ, Որդիք Կե-
45 րաւս, որդիք Սիայ, որդիք Փադոնէ, Որ-
դիք Ղաբանայ, որդիք Ագաբայ, որդիք
46 Ակուբ, որդիք Ագաբ, որդիք Սաղա-
47 մէի, որդիք Անան, Որդիք Գեդդէլ, որ-
48 դիք Գաար, որդիք Հռագեայ, Որդիք
Հռասոնէ, որդիք Նեկովդան, որդիք
49 Գազամ, Որդիք Գազայ, որդիք Փասէ,
50 որդիք Բասի, Որդիք Ասենայ, որդիք
51 Մովանիմ, որդիք Նեփուսիմ, Որդիք
Բակուբ, որդիք Ակուփայ, որդիք Արուր,
52 Որդիք Բասաղովթ, որդիք Միդայ, որ-
53 դիք Արսայ, Որդիք Բարկոս, որդիք Սի-
54 սարայ, որդիք Թամայ, Որդիք Նեսուայ,
55 որդիք Ատուփայ. Որդիք ծառայից Սողո-
մոնի, որդիք Սոտէ, որդիք Սոփերաթ,
որդիք Փադդուրայ, որդիք Յեդայ, որդիք
56 [20]Կերդոնէ, որդիք Կեդդիէլ՞, Որդիք Սա-
57 փատեայ, որդիք Ատտիլ, որդիք Փաքե-
րովթայ Ասաբոյիմ, որդիք Եմէի Ամենայն
58 [19]որդիք Նաթանեայ՞ եւ որդիք ծառայից
Սողոմոնի, երեք հարեւր իննսուն եւ երկու։
59 Եւ այս են ելեալքն [21]ի Թելմեղէք Թե-
ղարեսա, Քերուբ, Եդար՝ Եմեր՞, եւ ոչ
կարացին պատմել զտուն հայրցն իւ-
րեանց, եւ թէ իցէ զաւակ նոցա յԻսրա-
60 յելէ. Որդիք Դաղաւայ, որդիք Տուբիու,
որդիք Նեկովթայ, վեց հարեւր յիսուն
61 եւ երկու։ Եւ յորդւոց քահանայիցն՝
որդիք Արափայ, որդիք Ակուս, որդիք
Բերզելայի. [22]իբրեւ առին՞ ի դստերացն
Բերզելայի Գաղաադացւոյ [23]իւրեանց կա-

[1]Եբր. հինգ [2]Եբր. Փաաթ-մովաբայ. [3]Եբր. գ—յ—ւ—է [4]Եբր. Զաքքայ [5]Եբր. եւ վաթսուն [6]Եբր. վեց հարեւր քառասուն եւ երկու [7]Եբր. վեց [8]Եբր. Ազգադայ՝ հազար երկերիւր [9]Եբր. վեց հարեւր վաթսուն եւ վեց [10]Եբր. Բագուէի [11]Եբր. յիսուն [12]Եբր. ութ [13]Եբր. Արք [14]Եբր. Գաբաայ՝ վեցհարեւր [15]Եբր. Գայեայ՝ երկերիւր [16]Եբր. միւսոյ Եղամայ [17]Եբր. Քահանայք

[18]Եբր. եւթնուտասն [19]Եբր. Նաթանայիմք՝ (տե՛ս Նեեմ. Է. 60։) [20]Եբր. Դերկոնի, որդիք Գեդդելի [21]Եբր. ի Թելմելեհայ, ի Թեղհարսայ, ի Քերուբայ, յԱդդանայ, յԻմմերայ [22]Եբր. որ առ [23]Եբր. իւր կին, եւ կոչեցաւ ըստ անուանց

նոյա, եւ եղեւ մատուցումն անուանց˝
62 նոցա ։ Եւ խնդրեցաւ ազգահամար գրոց
նոցա եւ ոչ գտաւ, եւ որոշեցին զնոսա
63 ի քահանայիցն ։ Եւ ասէ [1]Աթերսաթթա
ցնոսա, Չէ արժան ձեզ ուտել ի սրբու-
թեան սրբութեանցն՝ մինչեւ յարիցէ
քահանայապետ եւ յայտնեալ ցուցցէ,
եւ նուաւ լուսաւորեսցի ամենայն մին-
չեւ ի սոյա˝ ։
64 Եւ էր ամենայն եկեղեցւոյն միանգա-
մայն, չորք բեւրք եւ երկու հազար եւ
65 երեք հարեւր վաթսուն, Առանց ծառա-
յից եւ աղախնաց [2]իւրեանց, եւ կրտսերք
նոցա˝ եւթն հազար երեք հարեւր երե-
սուն եւ եւթն, եւ երգիչք սաղմոսա-
սաց նոցա արք եւ կանայք՝ երկերիւր ։
66 Ձիք նոցա՝ եւթն հարեւր երեսուն եւ
վեց, Ջորիք նոցա՝ երկերիւր քառասուն
67 եւ [3]եւթն, Ուղտք նոցա՝ չորեք հարեւր
երեսուն եւ հինգ, էշք նոցա՝ վեց հա-
զար եւթն հարեւր քսան ։
68 Եւ իշխանք հայրապետացն որք եկին
ի տունն Տեառն յԵրուսաղէմ, նուա-
տաւորեցան ի տունն Աստուծոյ ի պատ-
69 րաստութիւն շինութեան նորա ։ Որչափ
եւ էր ի զօրութեան նոցա, ետուն ի
կազմած գանձու գործառնութեանն՝
ոսկի դրաքմայս վեց բեւր եւ [4]հա-
զար, եւ հարեւր պատմուճանս քահա-
70 նայից ։ Եւ նստան քահանայքն եւ Ղեւ-
տացիքն, եւ ի ժողովրդոցն, եւ երգե-
ցիկքն եւ դռնապանքն եւ [5]Նաթանա-
ցիքն ի քաղաքս իւրեանց, եւ ամենայն
Իսրայէլ յիւրաքանչիւր քաղաքս ։

## Գլ. Գ

1 Եւ ժամանեալ հասեալ ամիսն եւթնե-
րորդ. եւ էին որդիքն Իսրայէլի յիւրա-
քանչիւր քաղաքս. եւ ժողովեցան ա-
մենայն ժողովուրդն իբրեւ զմի այր յԵ-
2 րուսաղէմ ։ Եւ յարեաւ Յեսու Յովսե-
դեկեան եւ եղբարք նորա քահանայք,
եւ Զորաբաբէլ որդի Սաղաթիելի եւ
եղբարք նորա [6]վեց, եւ շինեցին սեղան
զոհից Տեառն Աստուծոյ Իսրայէլի՝ մա-
տուցանել ի վերայ նորա ողջակէզս, ըստ
գրելոյն յօրէնսն Մովսէսի առնն Աստու-
3 ծոյ ։ Եւ պատրաստեցին զսեղանն ըստ
կազմութեան իւրում. վասն զի կաս-
կածէին յազգաց երկրին. եւ մատուցին
ի վերայ նորա ողջակէզս [6]վաղվաղակի
Տեառն [6]Աստուծոյ իւրեանց˝, մի՛ ընդ
4 առաւօտս, եւ մի՛ ընդ երեկոյս ։ Եւ ա-
րարին զտօն տաղաւարահարացն ըստ
գրելոյն, եւ ողջակէզս օր ըստ օրէ [7]ի
մի թուոյ որպէս եւ պատուիրեալ էր
5 նոցա ։ Եւ մատուցանէին այլ եւս ող-
ջակէզս˝ յամսագլուխս եւ [6]ի շաբաթս,
եւ˝ յամենայն տօնս սրբեկանաց Տեառն
սրբութեանց, եւ զամենայն [8]ակամա-
6 յիցն զոր մեղանչէին˝ Տեառն ։ Եւ յառաջ-
նում ամսեանն եւթներորդին սկսան
մատուցանել ողջակէզս Տեառն [6]Աստու-
ծոյ, եւ տաճարն Տեառն ոչ եւս էր հիմն
7 արկեալ ։ Եւ ետուն արծաթ քարահա-
տացն եւ հիւսանցն, եւ կերակուրս եւ
ըմպելիս եւ ձէթ Սիդոնացւոց եւ Տիւ-
րացւոց, եւ բերէին փայտս մայրս ի Լի-
բանանէ ընդ ծով ի Յոպպէ, որպէս եւ
հրամայեաց նոցա Կիւրոս թագաւոր
Պարսից ։
8 Եւ յերկրորդ ամի եկանելոյ նոցա՝ յոր-
ժամ եկին ի տաճարն [9]Տեառն յԵրուսա-
ղէմ յամսեանն երկրորդի, սկսաւ Զորա-
բաբէլ Սաղաթիելեան եւ Յեսու Յով-
սեդեկեան, եւ եղբարք նոցա, քահա-
նայքն եւ Ղեւտացիքն եւ ամենայն ե-
կեալքն ի գերութենէն յԵրուսաղէմ. եւ
կացուցին զՂեւտացիսն ի քսանամենից
եւ ի վեր՝ վերակացուս ի վերայ գործոց
9 տանն Տեառն ։ Եւ [10]Յեսու եւ որդիք նո-
րա եւ եղբարք նորա, Կադմիէլ եւ որ-
դիք նորա, որդիք Յուդայ [11]վերա-
կացուք՝ ի վերայ գործոյ˝ տանն Տեառն,
[12]որդիք Ենադադ եւ եղբարք նորա˝ Ղեւ-
տացիք ։
10 [13]Եւ արկին հիմն եւ սկսան շինել զտունն
Տեառն, եւ կային քահանայքն˝ զգե-
ցեալ զպատմուճանսն, եւ հարկանէին
զփողս իւրեանց. եւ Ղեւտացիքն որդիք
Ասափայ ծնծղայիւք օրհնէին զՏէր [6]Աս-

[1] Եբր. Աթերսաթթա ցնոսա մի՛ ուտել ի սրբութեանցն՝ մինչեւ յարիցէ քահանայ Ուրիմու և Թումմիմու [2] Եբր. իւրեանց որ էին [3] Եբր. հինգ [4] Եբր. հազար, եւ մնաս արծաթոյ՝ հինգ հազար [5] Եբր. Նաթանայիմք [6]Յ Եբր. դ-[illegible]

[7] Եբր. Թուով ըստ պատուիրանին օր ըստ օրէ ։ (5) Եւ յետ այնորիկ մատուցանէին հանապազորդ ողջակէզս եւ [8] Եբր. զկամաւոր նուէրն զոր մատուցանէին [9] Եբր. Աստուծոյ [10] Եբր. Եւ կաց Յեսու [11] Եբր. իբրեւ զմի հսկել ի վերայ գործաւորաց [12] Եբր. որդիք Ենադադայ, որդիք նոցա եւ եղբարք նոցա [13] Եբր. Յորժամ արկին հիմն շինողքն տաճարին Տեառն, կացուցին քահանայս

տուած, որպէս եւ կարգեաց Դաւիթ
11 թագաւոր Իսրայէլի. Եւ ասէին այր ցընկեր
իւր, Խոստովան եղերուք եւ գոհացա-
րուք զՏեառնէ, զի քաղցր է, զի յաւիտ-
եան է ողորմութիւն նորա ի վերայ Իս-
րայէլի։ Եւ ամենայն ժողովուրդն մեծա-
ձայն օրհնէին զՏէր[1]Աստուած Իսրայէլի".
վասն զի անկան հիմունք տանն Տեառն։
12 Եւ բազումք ի քահանայիցն եւ յՂեւ-
տացւոցն եւ յիշխանաց հայրապետացն,
ի ծերոցն որոց տեսեալ էր [2]զառա-
ջարն Տեառն", եւ յայնժամ տեսին աչօք
իւրեանց զհիմն նորա, լային մեծաձայն.
եւ [3]ժողովուրդքն ամենայն նշանակէին
զուրախութիւն եւ բարձրագոյանէին"
13 զձայնս իւրեանց. Եւ ոչ ոք էր ի ժո-
ղովրդեանն որ կարէր [4]զիտել եւ լսել"
զձայն ուրախութեանն[5]. վասն զի ժողո-
վուրդն աղաղակէր մեծաձայն, եւ լսելի
լինէր ձայնն մինչեւ ի հեռաւոր տեղիս։

## Գլ. Դ

1 Եւ լուան որք նեղէին զՅուդա եւ զԲե-
նիամին, եթէ որդիքն Իսրայէլի եկեալքն
ի գերութենէն շինեն զտունն Տեառն Աս-
2 տուծոյ Իսրայէլի, Եւ մերձեցան առ
Զորաբաբէլ եւ առ իշխանս հայրապե-
տացն, եւ ասեն ցնոսա, Շինեսցուք եւ
մեք ընդ ձեզ, [6]եւ որպէս եւ դուք
խնդրեսցուք ի Տեառնէ Աստուծոյ ձեր-
մէ. քանզի" եւ մեք նոյնպէս զոհեմք
զոհս, յօրէ յորմէ Ասորդան թագաւոր
3 Ասորւոց ած զմեզ այսր։ Եւ ասէն ցնո-
սա Զորաբաբէլ եւ Յեսու [1]Յովսեդե-
կեանց եւ մնացորդք իշխանաց հայրա-
պետացն Իսրայէլի, Ոչ է արժան մեզ
եւ ձեզ հասարակ շինել զտուն [1]Տեառն
Աստուծոյ մերոյ. մեք միայն խոկ շի-
նեսցուք զտուն Տեառն Աստուծոյ Իս-
րայէլի, որպէս հրամայեաց մեզ Կիւրոս
4 թագաւոր Պարսից։ Եւ ժողովուրդք
երկրին այնորիկ լքուցանէին զձեռս ժո-
ղովրդեանն Հրէաստանի, եւ խափա-
5 նէին զնոսա ի շինելոյ։ Եւ կալեալ վար-
ձաւորս՝ խորհէին զնոսա խափանել զա-
մենայն աւուրս Կիւրոսի թագաւորու-
թեանն Պարսից մինչեւ յաւուրս Դարեհի
6 Պարսից արքայի։ Ի թագաւորութեանն

[7]Ասսուերոսի Պարսից", ի սկզբան թա-
գաւորութեան նորա՝ գրեցին թուղթ
[8]որք բնակեալ էին ի Հրէաստանի եւ
յԵրուսաղէմ։

[1]Եբր. գոհութե [2]Եբր. զառաջին տունն [3]Եբր. բազումք աղաղակէին ուրախութեամբ՝ բարձրացուցեալ [4]Եբր. ընտրել [5]Եբր.—յէշէն յամէլ—, ի ձայնէ լալոյ ժողովրդեանն [6]Եբր. զի որպէս դուք, խնդրեմք զԱստուած ձեր.

[7]Եբր. Ասուերոսի, կամ, Քսերքսեսի [8]Եբր. և Արամ. ամբաստանութեան ընդդէմ բնակչացն Հրէաստանի եւ Երուսաղեմի։

(7) Եւ յաւուրս Արտաշիսի գրեցին Բեսեղամ, Միթրիդատէս, Տաբեէլ եւ այլ ընկերք նոցա առ Արտաշէս արքայ Պարսից եւ գիր նամակին էր գրեալ Արամերէն եւ մեկնեալ Արամերէն։ (8) Հաէում հրամանատար եւ Սամսայի դպիր գրեցին թուղթ հակառակ Երուսաղեմի առ Արտաշէս արքայ օրինակ զայս. (9) Յայնժամ Հաէում հրամանատար եւ Սամսայի դպիր և այլ եւս ընկերք նոցա, Դինացիք, Ափարսաթաքացիք, Տարփաղեցիք, Ափերսացիք, Արքուեցիք, Բաբելոնացիք, Նուշանացիք, Դաւեցիք, Եղամացիք։ (10) Եւ այլ մնացեալ ազգք զորս ած Ասենափար մեծ եւ պատուական, եւ բնակեցոյց ի քաղաքս Սամարացւոց եւ զմնացեալսն յայս կողմն Գետոյն, այլովքն հանդերձ։ (11) Եւ այս են բանք թղթոյն զոր առաքեցին նոքա առ Արտաշէս թագաւոր։

Ծառայք քո որ եմք բնակեալ յայս կողմն Գետոյն, այլովքն հանդերձ։ (12) Գիտութիւն լիցի քեզ, թագաւոր, զի Հրեայքն որ ելին ի քէն, եկին առ մեզ յԵրուսաղէմ. շինեն զքաղաքն ապստամբ եւ զժանտ, եւ պարիսպս կանգնեցին եւ հիմունս եդին։ (13) Արդ յայտնի լիցի քեզ արքայ, զի եթէ քաղաքն այն շինեսցի, և պարիսպք նորա կանգնեսցին, հաս և տուրս եւ մաքս ըստ սովորութեանն ոչ տացեն, եւ ի վախճանի առնիցես վնաս թագաւորաց։ (14) Եւ արդ քանզի զաղ մեր յարքունուստ ուտեմք, եւ չէ արժան մեզ տեսանել զվնաս թագաւորին, վասն այսորիկ առաքեցաք և ազդարարաք արքայի։ (15) Զի խնդրեսցես ի գիրս յիշատակարանաց հարցն քոց, եւ գտցես ի գիրս պատմութեանց, և գիտասցես զի քաղաքն այն է քաղաք ապստամբ և վնասակար թագաւորաց եւ գաւառաց, եւ գաւաճանութիւնս գործեալ են ի նմա ի վաղուց անտի, և վասն այսորիկ կործանեալ է քաղաքս։ (16) Յայտ առնեմք թագաւորիդ, զի եթէ քաղաքս այս շինեսցի, եւ պարիսպք նորա կանգնեսցին, այնուհետեւ մասն որ յայսկոյս Գետոյն է՝ ոչ լինիցի այն քեզ։

(17) Եւ առաքեաց թագաւորն առ Հաէում հրամանատար եւ առ Սամսայի դպիր եւ առ այլ ծառայակիցս նորա որք բնակեալ էին ի Սամարիա, եւ առ այլ մնացորդս որ յայն կողմն Գետոյն, եւ ասէ, Խաղաղութիւն, այլովքն հանդերձ։ (18) Թուղթն զոր առաքեցէք առ իս՝ յայտ յանդիման ընթերցաւ առաջի իմ, (19) Եւ տուաւ յինէն հրաման եւ խնդրեցին եւ գտին, զի քաղաքն այն ի վաղուց անտի հակառակ թագաւորաց լեալ է, եւ ապստամբութիւն եւ գաւաճանութիւն լինէին ի նմա։ (20) Եւ թագաւորք հզօրք եղեն ի վերայ Երուսաղեմի, եւ տիրէին ամենեցուն որ յայնկոյս Գետոյն էին, եւ հաս եւ տուրս եւ մաքս ըստ սովորութեան տային նոցա։ (21) Եւ արդ տուք հրաման դադարեցուցանել զարսն

7 Եւ գրեցին յաւուրս Արտաշէսի Միթ-
րիդատէս Տաբեէլ՝ համգիրձ եւ այլ ծա-
ռայից նորա հարկահանօքն. եւ գրե-
ցին գիր Ասորերէն, եւ էր գնա թարգ-
8 մանեալ Հռէում Բաադամ։ Եւ այս են
բանք թղթոյն զոր առաքեցին նոքա առ
Արտաշէս թագաւոր. Ծառայք քո՝ որ
9 եմք բնակեալ յայս կողմն Գետոյն, Հռէ-
ում Բաադամ եւ Սամսայի գրիչ, եւ
այլ եւս ծառայակիցք մեր, Դինեէս,
Ափարսաթաքայիէ, Տարփալէէ, Ափեր-
սէէ, Արքուէէ, Բաբելոնէէ, Սուսանա,
10 Դեհաւէէ, Եւ այլ մնացեալ ազգք,
զորս բնակեցոյց Ասենափար մեծ եւ պա-
տուական ի քաղաքս Սամարայ, այլովքն
Սամարիա յայս կողմն Գետոյն, առ Ար-
13 տաշէս թագաւոր խաղաղութիւն։ Այժմ
գիտութիւն լիցի քեզ, թագաւոր, որ
եթէ քաղաքն այն շինեսցի եւ պարիսպք
նորա կանգնեսցին, հարկս քեզ ոչ ա-
14 տան. Այլ եւ ընդդիմամարտ եւս լիցին
թագաւորաց. եւ վասն զի յանդգնու-
թիւն մեք ընդդէմ թագաւորաց՝ ոչ կա-
միմք տեսանել. եւ վասն այսր ան-
15 նախ գրեցաք առ քեզ, թագաւոր, Զի
տեսցես եւ պատեսցես եւ գտցես ի գիրս
յիշատակարանաց հարցն քոց. եւ գի-
տասցես եթէ քաղաքս այս ապստամ-
բող է, եւ յամենայն ժամ ընդդէմ
կացին թագաւորաց, եւ ապստամբ են
ամենայն փախստէից յամենայն ժամա-
նակս յաւիտենից, եւ վասն այսորիկ
16 քաղաքս այս իսկ աւերեցաւ։ Արդ ցուցաք
մեք քեզ գիտել, թագաւոր, եթէ քա-
ղաքս այս շինեսցի եւ պարիսպք սորա
կանգնեսցին՝ ոչ է քեզ խաղաղութիւն։
17 Եւ առաքեաց թագաւորն առ Հռէում
Բաադամա եւ Սամսայի գրչի. եւ այլ
ծառայակցաց նոցա որք բնակեալ էին
ի Սամարիա, եւ մնացորդացն յայն կողմն
18 Գետոյն, եւ ասէ. Խաղաղութիւն ընդ
ձեզ. զհարկահանս զորս առաքեցէք առ
իս, մանեալ առաջի իմ եւ ընթերցա-
19 ցեալ իմձ զամենայն, Հասի ի վերայ եւ
գտի զի քաղաքդ այդ յաւիտենից ժա-
մանակաց ապստամբ է, եւ ընդդէմ թա-
20 գաւորաց լեալ է։ Եւ թագաւորք հզօրք
եւ բռնաւորք կացեալ են յԵրուսաղէմ,
բռնացեալ կալեալ զայն կողմն արեւմտից՝
յայն կողմն Եփրատ գետոյ։ Արդ գիւք ի վե-
րայ դոցա հարկս եւ հասս, զի մի եւ այլ
21 կամակարեալ բռնասցին։ Արդ այժմ առա-
նալ ձեզ տեղեկութիւն, երթայք արգելէք
եւ խափանեցէք զգործս նոցա, զի մի
22 շինեսցի քաղաքն. Եւ մի՛ներէք նոցա եւ
թողացուցանէք, այլ փոյթ յանձին կալեալ
արգահանջել զամենայն հարկս եւ զհասս.
զի մի՛ երբեք բազմասցին եւ զօրաս-
ցին, եւ լիցին ընդդէմ թագաւորաց։
23 Յայնժամ հարկահանն Արտաշէս թագա-
ւորի՝ այսինքն է Արտաշէսի՝ բերեալ
կարդաց զգիրն առաջի Հռէումայ եւ
Սամսայի գրչի, եւ ծառայակցաց նորա.
եւ եկեալ փութապէս յԵրուսաղէմ եւ ի
Հրէաստան մեծաւ զօրութեամբ եւ այ-
րուձիով՝ արգելին եւ խափանեցին
24 զՀրէայսն ի շինելոյ։՝՝ Յայնժամ խափա-
նեալ դադարեցաւ գործ տաճարին
[1]Տեառն Աստուծոյ յԵրուսաղէմ, եւ էր
դադարեցեալ մինչեւ յերկրորդ ամն
Դարեհի արքայի Պարսից։

## ԳԼ. Ե

1 Եւ մարգարէանային [2]Անգեաս եւ Զա-
քարիաս Ադդովեայ, մարգարէանային ի
վերայ Հրէաստանի եւ Երուսաղեմի՝՝
յանուն [1]Տեառն Աստուծոյ Իսրայելի։
2 Յայնժամ յարեան Զօրաբաբէլ Սաղա-
թիելեանց եւ Յեսու Յովսեդեկեանց՝ եւ
սկսան շինել [3]զտունն Տեառն Աստուծոյ
Իսրայելի՝՝, եւ միաբանեալ ընդ նոսա
մարգարէքն Աստուծոյ օգնէին նոցա։
3 Յայնմ ժամանակի եկն առ նոսա Թա-
թանիա իշխան կողմանց գետոյն Եփրա-
տու, եւ Սաթրաբուզան եւ ծառայա-
կիցք նոցա, եւ ասեն ցնոսա, Ո՞ հրա-
մայեաց ձեզ շինել զտունս զայս, եւ կամ
ո՞յր բանիւ կանգնեցէք[4] զաշտարակս զորս,
4 Եւ կամ զի՞նչ անուանք են արանցն այ-

---

զայնոսիկ, եւ քաղաքն այն մի՛ շինեսցի. մինչեւ եկեսցէ յինէն պատուէր հրամանի։ (22) Եւ այժմ զգոյշ լերուք մի՛ ինչ վրիպել յերիդ յայդմիկ. զի մի՛ յաճախեսցէ աւերն ի վնաս թագաւորաց։

(23) Արդ՝ իբրեւ պատճէն հրովարտակին Արտաշիսի արքայի ընթերցաւ առաջի Հռէումայ եւ Սամսայեայ դպրի եւ ընկերաց նոցա, փութացան երթալ յԵրուսաղէմ ի վերայ Հրէիցն, եւ դադարեցուցին զնոսա զօրութեամբ բազկի եւ բռնութեամբ։

[1] Յ Աբր. ղոյ. [2] Աբր. Անգեաս մարգարէ եւ Զաքարիաս որդի Ադդովայ մարգարէ ի վերայ Հրէիցն որ ի Հրէաստանի և յԵրուսաղէմ [3] Աբր. զտունն Աստուծոյ որ յԵրուսաղէմ [4] Աբր. զպարիսպս զորս ։ (4) Յայնժամ ասացաք ցնոսա թէ զինչ էին անուանք արանցն որ զշինուածս զայս կանգնէին

նոցիկ՝ որք են առաջնորդք շինելոյ զքա-
5 ղաքս զայս"։ Եւ եղեն աչք [1]Տեառն Աս-
տուծոյ ի վերայ [2]Հրէիցն գերելոցն ի
գերութենէն". եւ ոչ խափանեցին զնո-
սա մինչեւ տայցեն գիտել Դարեհի [3]ար-
քայի. եւ յայնժամ առաքեցին զհարկա-
հանս վասն իրացս այսոցիկ՝ զի անդե-
կասցին գրով։
6 Եւ այս է գրեալն. Թաթանա իշխան
7 կողմանց գետոյն, Եւ Սաթրաբուզան եւ
ծառայակիցք նորա Փարսաքեէ եւ Աե-
8 սիմ," Դարեհի թագաւորի խաղաղութիւն
բազում։ Գիտութիւն լիցի թագաւորիդ,
զի երթեալ մեր յերկիրն Հրէաստանի [4]ի
քաղաքն Երուսաղէմ, տեսաք զտաճարն
Տեառն" Աստուծոյ մեծի, զի շինէին ըն-
տիր քարամբք, եւ փայտս պահանգս
զնէին յորմն. եւ գործն էր յաջողակ,
9 եւ յառաջէր ի ձեռս նոցա։ Յայնժամ
հարցաք ցծերս նոցա եւ ասեմք, Ո՞
հրամայեաց ձեզ շինել զտունս զայս,
10 եւ [5]կամ ո՞յր բանիւ հաստատէք զդա"։ Եւ
խնդրեալ զանուանս առաջնորդացն, զի
տացուք անդեկութիւն ձեզ, եւ զի գրես-
ցուք զանուանս արանց իշխանաց նո-
11 ցա։ Եւ զայս պատասխանի արարեալ
Հրէիցն ասեն ցմեզ. Մեք եմք ծառայք
[1]Տեառն Աստուծոյ երկնի եւ երկրի, եւ
շինեմք զտունս զայս որպէս եւ էր շի-
նեալ յառաջ քան զբազում ամս, զոր
շինեաց [6]թագաւորն Իսրայելի մեծն Սո-
ղոմոն. ըստ այնմ օրինակի եւ մեք հաս-
12 տատեմք զսա։ Վասն զի" հարքն մեր
բարկացուցին զԱստուած երկնի [1]եւ երկ-
րի", եւ ետ զնոսա ի ձեռս Նաբուքոդո-
նոսորայ արքային Բաբելացւոց եւ Քաղ-
դէացւոց, եւ զտունս զայս քակեաց,
եւ զժողովուրդն պանդխտեցոյց ի Բա-
13 բելոն։ Եւ յառաջնում ամի Կիւրոսի
թագաւորի Բաբելացւոց, Կիւրոս թա-
գաւոր հրամայեաց. շինել զտունս զայս
14 [1]Տեառն Աստուծոյ։ Եւ զկահ տանս [7]այ-
սորիկ զարծաթեղէնս եւ զոսկեղէնս՝
զորս Նաբուքոդոնոսոր [8]առ յԵրուսաղե-
մէ, եւ եկն եբեր ի տուն աստուածոց
իւրոց", առեալ զայն Կիւրոսի թագաւո-
րի [9]ի տանէ թագաւորին, եւ ետ ցՍա-
15 մանասար գանձաւոր", Եւ ասէ ցնա,
Զամենայն սպաս եւ զկահ առ եւ երթ
յԵրուսաղէմ ի տուն Տեառն որ է անդ,
եւ [10]տար զեր զկահդ" ի տեղւոջ իւրում։
16 Յայնժամ [11]Սամանասար եկն եւ արկ
զհիմն տաճարին [1]Տեառն Աստուծոյ յԵ-
րուսաղէմ. եւ յայնմ հետէ շինեմք, եւ
17 ոչ եւս է կատարեալ։ Արդ եթէ բար-
ւոք թուի քեզ, թագաւոր, այց արա
եւ տես ի տունս [12]պահպանութեանց գրոց
յիշատակարանաց թագաւորաց Բաբե-
լացւոց". զի գիտասցես թէ արդարեւ
Կիւրոս թագաւորն հրամայեա՞ց շինել
[13]զտունս Տեառն ի Հրէաստանի" յԵրու-
սաղէմ. եւ անդեկացեալ քո, թագա-
ւոր, վասն իրացս այսոցիկ՝ առաքես-
ջիր առ մեզ։

ԳԼ. Զ

1 Յայնժամ Դարեհ թագաւոր [14]այց արար՝
խնդրեաց եւ եգիտ ի տունս թագաւո-
րաց գրոց յիշատակարանացն ի Բաբե-
2 լոնի։ Եւ գտեալ յԱմաթանի քաղաքի
Բատանացւոց" գլուխ մի գրոյ տումա-
րի, եւ զայս ինչ գրեալ էր ի գիրս յի-
շատակարանին։
3 Յամին առաջնում Կիւրոսի, Կիւրոս
թագաւոր հրաման ետ վասն տանն
[7]Տեառն որ յԵրուսաղէմ. ասէ, Շինես-
ցի տաճարն [7]Տեառն, տեղին ուր զոհեն
զզոհսն Տեառն. եւ [15]ետ զչափ" բարձ-
րութեանն կանգունս վաթսուն, եւ լայ-
4 նութեանն կանգունս վաթսուն. Եւ
կարգք երեք ի զօրաւոր քարանց, եւ
կարգ մի փայտեղէն. եւ [16]այսպէս շի-
նեսցի եւ յարկցի ամենայն տաճարն"։
5 Եւ զկահ տանն [7]Տեառն՝ զարծաթեղէնս

[1] ՅԱյլ. պակասէ  [2] Այլ. ծերոց Հրէիցն  [3] Այլ. և բերել հրովարտակս վասն իրացս այսոցիկ։ (6) Այս է պատճէն թղթոյն զոր առաքեցին առ Դարեհ արքայ՝ Թաթանա իշխան յայսկոյս Գետոյն, եւ Սաթրբուզան, եւ ընկերք նոցա Ափարսաքացիք որ յայսկոյս Գետոյն։ (7) Եւ էր գրեալ այսպէս ի թղթին զոր առաքեցին. [4] Այլ. ի տուն  [5] Այլ. զպարիսպս զորս կանգնել  [6] Այլ. մեծ ոմն թագաւոր Իսրայելի եւ կատարեաց։ (12) Բայց  [7] Այլ. Աստուծոյ

[8] Այլ. տարաւ ի տաճարէն որ յԵրուսաղէմ, և եկն եբեր ի մեհեան իւր որ ի Բաբելոն  [9] Այլ. ի մեհենէ անտի որ ի Բաբելոն, եւ ետ ցՍասբասար զոր էր կարգեալ հրամանատար  [10] Այլ. տունն Աստուծոյ շինեսցի  [11] Այլ. Սասբասար  [12] Այլ. գանձուց արքունի որ ի Բաբելոն  [13] Այլ. զտունն Աստուծոյ  [14] Այլ. ետ հրաման, եւ խնդրեցաւ ի մատենադարանին ուր գանձքն պահէին ի Բաբելոն։ (2) Եւ գտեալ յԵկբատանս յարքունիս որ է յաշխարհին Մարաց  [15] Այլ. որկցի հիմն նորա զօրութեամբ. չափ  [16] Այլ. ծախքն յարքունուստ տացին

և զսպասն ոսկեղէնս զոր երեր Նաբուքոդոնո-
սոր ի տանէ Տեառն յԵրուսաղեմէ, և եդ
ի Բաբելոն, արդ տացեն ի բաց և տար-
ցին ի տաճարն [1]Տեառն յԵրուսաղէմ. և
երթեալ տարցին ի տեղի իւր ի տունն Աս-
6 տուծոյ ուր լեալ էր։ Ցայնժամ Դարեհ
ետ գիր հրամանի իշխանաց կողմանց
Գետոյն, Սաթրաբուզանայ և ծառա-
յակցաց նորա ի կողմանս Գետոյն, և
7 եւս ի հեռագոյն տեղիս"։ Եւ արդ յայսմ
հետէ թող տուք չինել զտունն Աստու-
ծոյ իշխանացն Հրէից և ծերոցն Իս-
րայելի եւ չինեսցեն զտունն Աստուծոյ ի
8 տեղւոջ իւրում։ Եւ իմ [2]հրամայեալ՝ մի՛
ոք արգելցէ զծերս Իսրայելի" ի չինել
զտուն Տեառն Աստուծոյ իւրեանց. [3]և
յիշխանութենէ թագաւորութեան իմոյ
որ են հարկահանք կողմանց Գետոյն"
ամենայն զգուշութեամբ տացեն զծախս
արանցն այնոցիկ եւ մի՛ խափանեսցեն։
9 Եւ [4]զորդիս ցլուց" եւ խոյս եւ ամիկս
յողջակէզս [5]Տեառն Աստուծոյ երկնից.
ցորեան եւ աղ եւ գինի եւ ձէթ, որ-
պէս եւ հրամայեսցեն [6]քահանայապետքն
յԵրուսաղէմ. եւ լիցի անխափան տու-
եալ օր ըստ օրէ [5]որպէս եւ խնդրես-
10 ցեն"։ Եւ մատուսցեն պատարագ ի հոտ
անուշից [5]Տեառն Աստուծոյ երկնից, եւ
արասցեն աղօթս վասն կենաց թագա-
11 ւորին եւ որդւոց նորա։ Եւ յինէն ել
հրամանս այս. եւ ամենայն մարդ որ
կասցէ ընդդէմ հրամանի իմոյ՝ [7]քակես-
ցի տուն նորա, եւ առեալ" փայտ ի
տանէ նորա ուղղեսցեն եւ բեւեռեսցեն
զայրն [8]ի նմա որ եկաց ընդդէմ հրա-
մանի իմոյ, եւ եղիցի նմա ի նախատինս
12 յաւիտենից"։ Եւ Աստուած՝ որոյ բնա-
կեալ է անուն նորա անդ, եղծէ եւ ա-
ւերեսցէ զթագաւորութիւնն եւ զժողո-
վուրդն, որ յանդգնեսցէ ձգել զձեռն
իւր եւ արգելուլ ապականել զտունն
Աստուծոյ որ յԵրուսաղէմ. ես Դարեհ
[5]թագաւոր եդի զհրամանս զայս [9]եւ մի՛
ոք իշխեսցէ անցանել"։
13 Յայնմ ժամանակի [10]իշխան կողմանց"
Գետոյն եւ Սաթրաբուզան եւ ծառա-
յակիցք նոցա, առ որս առաքեաց Դա-
րեհ թագաւոր, վաղվաղակի կատարէին
14 զհրամանս նորա։ Եւ ծերքն Հրէից [11]եւ
Ղեւտացիքն չինէին", ի ժամանակս մար-
գարէութեանն Անգեայ եւ Զաքարեայ
որդւոյ Ադդովայ. եւ չինեցին եւ հաս-
տատեցին ըստ հրամանին [5]Տեառն Աս-
տուծոյ Իսրայելի. եւ որպէս հրամայե-
ցին Կիւրոս [5]թագաւոր եւ Դարեհ, եւ
ի ժամանակս Արտաշիսի թագաւորին
15 Պարսից։ Եւ որ օր երեք էր ամսոյն Ա-
դարայ, յամին վեցերորդի Դարեհի ար-
քայի, կատարեցաւ տաճարն։
16 Եւ արարին որդիքն Իսրայելի՝ քա-
հանայքն եւ Ղեւտացիքն եւ որք եկեալ
էին ի գերութենէ նաւակատիս տանն
17 [12]Տեառն մեծաւ ուրախութեամբ։ Եւ
մատուցանէին ի նաւակատիս տանն
[12]Տեառն զուարակս հարիւր, խոյս եր-
կերիւր, գառինս չորեքհարիւր, եւ ա-
միկս յայծեաց վասն մեղաց ամենայն
Իսրայելի՝ երկոտասան, ըստ թուոյ ցե-
18 ղիցն Իսրայելի։ Եւ կացուցին զքահա-
նայսն ըստ տեղեաց իւրեանց, եւ զՂեւտա-
ցիսն ըստ վիճակի բաժանմանն իւրեանց
ի պաշտաւորութիւն [13]Տեառն Աստուծոյ
յԵրուսաղէմ, երկու հազար եւ երկերիւր,"
որպէս եւ գրեալ է ի գիրս Մովսիսի։
19 Եւ արարին որդիքն Իսրայելի եկեալք
ի գերութենէն զզատիկն Տեառն ի չո-
րեքտասաներորդում ամսոյն առաջնոյ.
20 [14]Եւ սրբեցան քահանայքն եւ Ղեւտա-
ցիք, եւ եղեն ամենեքեան սուրբք, եւ
զենին զզատիկն [15]Տեառն, ամենայն որք
եկեալ էին ի գերութենէն, եւ եղբարք
21 իւրեանց եւ քահանայք"։ Եւ կերան
որդիքն Իսրայելի զզատիկն ամենեքեան
[16]որք դարձեալ էին ի պղծութեանց ազ-
գաց երկրին, [17]եւ որք եկեալ էին առ
նոսա" խնդրել զՏէր Աստուած Իսրայե-
22 լի։ Եւ արարին զտօն բաղարջակերացն

[1] Այլ. որ է յԵրուսաղէմ ի տեղի իւր, և իջուսցես ի տունն Աստուծոյ։ (6) Վասն այսորիկ արդ, Թաթանա, հրամանատար յայնկոյս Գետոյն, Սաթրաբուզան և ընկերք նոցա Աֆարսաքացիք որ յայնկոյս Գետոյն, ի բաց կացէք անտի [2] Այլ. հրամայեալ է թէ զինչ առնիցէք ծերոցն Իսրայելի [3] Այլ. յարքունի գանձուց, ի հարկացն որ յայնկոյս Գետոյն [4] Այլ. որ ինչ պիտոյ իցէ նոցա՝ զուարակս [5]Յ Այլ. պակաս [6] Եբր. քահանայքն որ [7] Այլ. քակեսցեն [8] Այլ. ի նմա, և վասն այսորիկ եղիցի տունն նորա յաղբեւս

[9] Այլ. թող վաղվաղակի կատարեսցի [10] Այլ. Թաթանա իշխան յայս կոյս [11] Այլ. չինէին և յաջողէին [12] Այլ. Աստուծոյ [13] Այլ. Աստուծոյ յԵրուսաղէմ. [14] Եբր. Զի [15] Եբր. վասն ամենայն որդւոցն գերութեան, և վասն եղբարց իւրեանց քահանայից և վասն իւրեանց [16] Եբր. որք եկեալ էին ի գերութենէ և ամենեքին որք [17]Յ Եբր. պակաս

զուԹն [1]որ, եւ ուրախ եղեն յԵրուսա-
ղէմ"․ վասն զի ուրախ արար զնոսա
Տէր [2]Աստուած Իսրայէլի"․ եւ Տէր դար-
ձոյց զսիրտ Թագաւորին [3]Ասորւոց առ
նոսա, զի օգնեսցէ եւ զօրացուսցէ զձեռս
նոցա ի գործ [4]տաճարին Տեառն" Աս-
տուծոյ Իսրայէլի։

Գլ․ Է

1 Եւ յետ բանիցս այսոցիկ ի Թագաւո-
րութեանն Արտաշիսի արքայի Պարսից եկ
Եզրա որդի Սարուայ, որդւոյ Ազարիայ,
2 որդւոյ Քեղկիայ, Որդւոյ Սեղումայ,
որդւոյ Սադովկայ, որդւոյ Աքիտովբայ,
3 Որդւոյ Ամարիայ, որդւոյ Ազարեայ,
4 որդւոյ Մարովթայ, Որդւոյ Զարեայ,
5 որդւոյ Ոզեայ, որդւոյ Բովկայ, Որդւոյ
Աբիսուայ, որդւոյ Փենեէսի, որդւոյ Ե-
ղիազարու, որդւոյ Ահարոնի առաջին
6 քահանայի․ Այս Եզրա որ ել ի Բաբե-
լոնէ․ եւ սա էր դպիր արագագիր օրէ-
նացն Մովսիսի զոր ետ Տէր Աստուած
Իսրայէլի․ եւ ետ նմա Թագաւորն զա-
մենայն որ ինչ խնդրեաց ի նմանէ, զի
ձեռն Տեառն Աստուծոյ[5] էր ընդ նմա։
7 Եւ ելին ընդ նմա յորդւոցն Իսրայէլի
եւ ի քահանայից եւ ի Ղեւտացւոց, եւ
յերգեցիկ պաշտօնէից եւ ի դռնապանաց
եւ ի Նաթանայեցւոցն՝ յԵրուսաղէմ․
յամին եւթներորդի Արտաշիսի Թագա-
8 ւորի, [6]Ելին յԵրուսաղէմ յամսեանն հին-
գերորդի, որ էր ամ եւթներորդ Թա-
9 գաւորին․ [7]Եւ յամսամտին հինգերորդ
ամսեանն եկն Եզրա յԵրուսաղէմ․ վասն
զի ձեռն [2]Տեառն Աստուծոյ բարութեամբ
10 էր [8]ընդ նոսա։ Եւ եդ Եզրա ի սրտի իւ-
րում" խնդրել զօրէնսն Տեառն, եւ [9]գրել
զնա եւ ուսուցանել Իսրայէլի զհրամանս
եւ զդատաստանս։
11 Եւ այս են լիք հրամանի զոր ետ Ար-
տաշէս Թագաւոր Եզրի քահանայի եւ
դպրի գրոց բանի օրինացն Տեառն եւ
12 հրամանաց նորա ի վերայ Իսրայէլի․ Ար-
տաշէս՝ Թագաւորաց Թագաւոր, [10]Եզրի՝
դպրի օրինացն Տեառն Աստուծոյ երկ-
13 նից․ Ամենայն հաստատութեամբ ետու
ես" հրաման ի վերայ ամենեցուն որ են
ընդ Թագաւորութեամբ իմով, ժողո-
վրդոցն Իսրայէլի եւ քահանայիցն եւ
Ղեւտացւոցն․ զի [11]եկեսցեն ամենեքեան
14 յԵրուսաղէմ ընդ քեզ։ Ցերեսաց Թա-
գաւորի եւ եւթն խորհրդակցացն առա-
քեցար զիրս այս, այց առնել Հրէիցն եւ
Երուսաղեմացւոցն առաջնորդութեամբ
Եզրի, որոյ են օրէնք Աստուծոյ ի ձե-
15 ռին իւրում։ Եւ հրամայեաց Թագաւորն
տալ ի տուն Տեառն արծաթ եւ ոսկի,
հանդերձ խորհրդակցօք իւրովք յԵրու-
սաղէմ, եւ դնել ի տաճարին առաջի
16 Տեառն Աստուծոյ Իսրայէլի․ Եւ ամե-
նայն որոյ գտցի արծաթ եւ ոսկի, Հրեայք
որք լցեն պանդուխտք ի Բաբելոնի՝ ժո-
ղովուրդք եւ քահանայք, տացեն ընդ

[1]Ոմն․ օր ուրախութեամբ [2]Յոմն․ պակասէ [3]Ոմն․ Ասորեստանեայց [4]Ոմն․ տանն Աստուծոյ, [5]Ոմանք յաւելուն, իւրոյ [6]Ոմն․ Եւ եկն [7]Ոմն․ Քանզի յամսամտին ամսեանն առաջնոյ սկիզբն արար ելանել ի Բաբելոնէ. և [8]Ոմն․ ընդ նմա։ (10) Քանզի Եզրա պատրաստեաց զսիրտ իւր [9]Ոմն․ կատարել [10]Այլ․ Եզրի քահանայի, դպրի կատարելոյ օրինացն Աստուծոյ երկնից, ողջոյն հանդերձ։ (13) Ես ետու

[11]Այլ․ ամենեքին որ իւրեանց կամաւ կամեցանելանել յԵրուսաղէմ՝ եկեսցեն ընդ քեզ․ (14) Առաքիս դու յերեսաց Թագաւորին եւ եւթն խորհրդականացն այց առնել Հրէիցն եւ Երուսաղէմացւոց ըստ օրինաց Աստուծոյ քո որ ի ձեռին քում․ (15) Եւ տարցիս զարծաթն եւ զոսկին զոր Թագաւորն եւ խորհրդակիցք նորա իւրեանց կամօք ետուն ընծայ Աստուծոյ Իսրայէլի որոյ բնակութիւն է յԵրուսաղէմ․ (16) Եւ զամենայն արծաթ եւ զոսկի զոր գտցես յամենայն երկրին Բաբելացւոց հանդերձ կամաւոր ընծայիւք ժողովրդեանն և քահանայից, ընծայ կամաւոր վասն տանն Աստուծոյ ձերոյ որ յԵրուսաղէմ։ (17) Վասն այնորիկ գնեսցես դու ամենայն փութով արծաթովս այնուիկ զուարակս եւ խոյս եւ ամիկս հանդերձ ընծայիւք նոցա հացի եւ նուիրօք հեղման եւ մատուսցես զնոսա ի վերայ սեղանոյ տանն Աստուծոյ ձերոյ որ յԵրուսաղէմ․ (18) Եւ որ ինչ հաճոյ թուեսցի քեզ եւ եղբարց քոց առնել մնացելովն արծաթովս եւ ոսկւով՝ արասջիք ըստ հրամանի Աստուծոյ ձերոյ։ (19) Եւ զկահ տուեալ քեզ ի սպասաւորութիւն տանն Աստուծոյ քո՝ մատուսցես առաջի Աստուծոյ Երուսաղեմի։ (20) Եւ որ ինչ այլ եւս պիտոյ իցէ վասն տանն Աստուծոյ քո, զոր արժան իցէ քեզ տալ, տացես ի տանէ գանձուց Թագաւորին։ (21) Եւ ես, Արտաշէս արքայ, ետու հրաման ամենայն գանձաւորաց որ յայնկոյս Գետոյն՝ զի զոր ինչ Եզրաս քահանայ, դպիր օրինաց Աստուծոյն երկնից խնդրեսցէ ի ձէնջ, տացի վաղվաղակի․ (22) Մինչեւ հարեւր քանքար արծաթոյ, եւ հարեւր քոռ ցորենոյ եւ հարեւր մար գինւոյ եւ հարեւր մար ձիթոյ, եւ աղ առանց գրելոյ զչափն թէ իցէ։ (23) Որ ինչ եւ հրամայեսցի յԱստուծոյն երկնից, արարէք վաղվաղակի վասն տանն Աստուծոյ երկնից․ քանզի ընդէ՞ր գայցէ բարկութիւն ի վերայ Թագաւորութեան արքայի եւ որդւոց նորա։

իւրեանս եւ տարցին ի տուն Տեառն յԵ-
17 րուսաղէմ։ Եւ ամենեքեան որք եկեն՝
պատրաստեսցեն զայս օրինակ, որպէս
եւ գրեցաք. զուարակս, խոյս, գառինս,
եւ զզոհս եւ զնուէրս նոցունց, եւ մա-
տուսցեն ի վերայ սեղանոյ Տեառն Ա-
18 սուծոյ ձերոյ յԵրուսաղէմ։ Եւս ա-
ռաւել վասն քո, ասէ, եւ վասն եղ-
բարց քոց արարի բարութիւն, եւ թո-
ղի արծաթ եւ ոսկի. որպէս վայելէ Ա-
19 ստուծոյ ձերոյ՝ արարէք։ Եւ զկահ տու-
եալ քեզ ի սպասաւորութիւն տանն
Տեառն, ա՛ռ ընդ քեզ եւ տար յԵրու-
20 սաղէմ. Եւ զաւելորդսն տաճարի ի պա-
21 հեստ գանձու տան թագաւորաց։ Ես
Արտաշէս թագաւոր ետու հրաման ա-
մենայն գանձաւորաց որ իցեն յայն կողմն
Եփրատ գետոյն. զամենայն ինչ որ եւ
խնդրեսցէ ի ձէնջ Եզրա քահանայ եւ
դպիր օրինացն Տեառն Աստուծոյ երկ-
նից, տաջիք ի տուն Տեառն Աստուծոյ
22 նորա։ Պատրաստ արարէք արծաթ տա-
ղանդս հարեւր, եւ ցորեան՝ քոռս հա-
րեւր, եւ գինի՝ նոյնչափ, եւ ձէթ՝ նոյն-
չափ. եւ մի՛ ոք կասցէ ընդդէմ հրա-
23 մանաց թագաւորի։ Ամենայն ինչ զոր
հրամայեցի ի տուն Տեառն Աստուծոյ
երկնից եւ երկրի՝ այս եղիցի, եւ մի՛ ոք
ձեռնարկեսցէ խափանել ի տանէ Տեառն
Աստուծոյ Իսրայելի. զի մի՛ եղիցի բար-
կութիւն ի Տեառնէ Աստուծոյ ի վերայ
թագաւորութեան իմոյ եւ որդւոյ իմոյ։"
24 Եւ ետու ձեզ գիտել՝ թէ ամենայն որ
իցեն ի քահանայից եւ ի Ղեւտացւոց եւ
ի սաղմոսերգողաց, ի դռնապանացն եւ
ի Նաթանայացւոցն, եւ որք իցեն սպա-
սաւորք տանն Աստուծոյ, մի՛ տացեն
հարկս եւ մի՛ ոք իշխեսցէ ծառայեցու-
25 ցանել զնոսա։ [1]Եւ դու, Եզրա, որոյ է
իմաստութիւն Աստուծոյ ի ձեռին քում,
կացո դպիրս եւ դատաւորս զի դատես-
ցեն զամենայն ժողովուրդս որ են յայն
կողմն Գետոյն, եւ ուսուսցեն ամենե-
ցուն որք ոչ գիտիցեն զօրէնս Աստու-
26 ծոյ քո։ Եւ ամենեքեան որք ոչ գիտի-
ցեն, եւ ամենեքեան որք ոչ առնիցեն
ըստ օրինացն Տեառն եւ ըստ օրինաց թա-
գաւորին, մասնեալք լիցին ի դատաս-
տան ըստ գործոց իւրեանց, եթէ ի մահ,
եթէ ի տանջանս", եթէ ի տուգանս եւ
եթէ ի կապանս։
27 Օրհնեալ է Տէր Աստուած հարցն մե-
րոց, որ արկ զայս ի սիրտ թագաւորին,
եւ փառաւորեաց զտունն Տեառն [2]Աստու-
28 ծոյ մերոյ" որ է յԵրուսաղէմ, Եւ արար առ
իս զողորմութիւն, եւ պատուեաց զիս
առաջի թագաւորին եւ խորհրդակցաց
նորա, եւ առաջի ամենայն իշխանաց թա-
գաւորին. եւ ես զօրացայ, վասն զի ձեռն
Տեառն [3]ամենայն բարութեամբ" էր ընդ
իս. ժողովեցի զամենայն իշխանս Իս-
րայելի ելանել ընդ իս։

ԳԼ. Ը

1 Եւ այս են իշխանք հայրապետացն [4]որ
ելանէին ընդ իս ի թագաւորութեանն
Արտաշիսի թագաւորի [5]Բաբելացւոց.
2 Յորդւոցն Փենեհեսի՝ Գերսոն, յորդւոցն
Իթամարայ՝ Դանիէլ, յորդւոցն Դաւ-
3 թայ՝ Ատտուս, Յորդւոցն Սեքենեայ՝
յորդւոցն Փարոսայ՝ Զաքարիա, եւ ընդ
4 նմա արք հարեւր յիսուն. Յորդւոցն
Փաաթմովաբ՝ Եղիանա որդի Զարայ, եւ
5 ընդ նմա երկերիւր արանց. Յորդ-
ւոցն [6]Զաթուէի՝ Սեքենիա" որդի Ա-
զիելի, եւ ընդ նմա երեք հարեւր ա-
6 րանց. Յորդւոցն Ադինայ՝ Աբեդ որդի
Յովնաթանայ, եւ ընդ նմա յիսուն ա-
7 րանց. Յորդւոցն Եղամի՝ Իսաիաս որդի
Աթողեայ, եւ ընդ նմա եւթանասուն ա-
8 րանց. Յորդւոցն Սափատեայ՝ Զարադիա
որդի Միքայելի, եւ ընդ նմա [7]ութանա-
9 սուն արանց. Յորդւոցն Յովաբայ՝ Աբ-
դիա որդի Յեքիելի, եւ ընդ նմա երկե-
10 րիւր եւ ութեւտասն արանց. Յորդւոցն
[8]Բաանեայ՝ Սեղիմութ որդի Յովսեփայ",
եւ ընդ նմա հարեւր վաթսուն արանց.
11 Յորդւոցն Բաբէի՝ Զաքարիա որդի Բա-
բի, եւ ընդ նմա քսան եւ ութ արանց.
12 Յորդւոցն [9]Ականիկամայ եւ Ազգադայ եւ
Յովհան որդի Սակատանայ", եւ ընդ նմա
13 հարեւր եւ տասն արանց. Յորդւոցն Ա-

---

[1] Այլ. Եւ դու, Եզրա, ըստ իմաստութեանն Աստուծոյ քո որ ի ձեռին քում է, կացուցես իշխանս եւ դատաւորս, որ դատեսցին զամենայն ժողովուրդն որ յայնկոյս Գետոյն, զամենայն որ գիտիցէ զօրէնս Աստուծոյ քո, եւ ուսուսջիք զորս ոչն գիտեն. (26) Եւ որ ոչ առնիցէ զօրէնս Աստուծոյ քո եւ զօրէնս արքայի, եղիցի դատաստան ի վերայ նորա վաղվաղակի, եթէ՝ ի մահ եւ եթէ՝ յաքսոր

[2] Եբր. [illegible] [3] Եբր. Աստուծոյ իմոյ [4] Եբր. եւ ազգահամար նոցա որ [5] Եբր. ի Բաբելոնէ [6] Եբր. Սեքենեայ [7] Եբր. ութսուն [8] Եբր. Սեղիմութեայ որդի Յովսեփայ [9] Եբր. Ազգադայ՝ Յովհանան որդի Ակատանայ

զոնիկամ՝ [1]Էսաքարի. եւ այս են անուանք
նոցա, Եղիփաղաթ, Յէիէլ եւ Սամա,
14 եւ ընդ նմա վաթսուն արանց. Յորդ-
ւոցն Բագուեայ՝ Ութայի եւ Զաքուր, եւ
ընդ նմա եւթանասուն արանց:
15 Եւ ժողովեցի զնոսա առ եզր գետոյն
որ գայ [2]յԵւի, եւ առեալ անդ օթեւանս
աւուրս երիս. եւ ի բազմութեան ժո-
ղովրդեանն՝ յորդւոց քահանայիցն եւ
16 յորդւոցն Ղեւեայ ոչ գտի զոք: Եւ ա-
ռաքեցի առ Եղիազար եւ առ Արիէլ եւ
առ Սեմեա, եւ [3]զԱռնաամ եւ զԱրիբ եւ
զԵղնաթան եւ զՆաթան եւ զԶաքարիա
եւ զՄէսողամ եւ զՅովարիբ եւ զՅեղ-
17 մաթամ: Եւ իմացուցեալ ածին զնոսա ա-
ռաջի իշխանացն որ էին ի տեղւոջ գան-
ձաւորացն". եւ եդի բանս ի բերանս նոցա
խօսել ընդ [4]եղբարս իւրեանց Նաթա-
նիմ, որ էր ի տեղի գանձաւորացն զորս
ածին առ մեզ, որք երգէին ի տան Աս-
18 տուծոյ մերոյ: Եւ եկին" առ մեզ, քան-
զի էր ձեռն Տեառն ի բարութիւն ընդ
մեզ, յորդւոյն [5]Ղեւեայ որդւոյ Իսրա-
յելի. եւ զառաջինն եկին առ մեզ որ-
դիք նորա եւ եղբարք նորա ութեւտասն.
19 Եւ Ասեբիա եւ Յեսեա որդի Մերարեայ,
եւ եղբարք նորա եւ որդիք նորա՝ արք
20 քսան. Եւ ի Նաթանայ" զոր ետ Դաւիթ
եւ իշխանքն ի ծառայութիւն Ղեւտաց-
ւոցն [6]եւ ի Նաթանայիմ" երկերիւր եւ
քսան. ամենեքեան ժողովեցան ըստ ա-
նուան իւրեանց:
21 Եւ քարոզեցաք անդ պահս առ եզր
գետոյն [7]Ասիս, եւ մատուցաք անդ ա-
ղօթս առաջի [8]Տեառն Աստուծոյ մերոյ,
խնդրել ի նմանէ ճանապարհ ուղղութեան
մեզ եւ որդւոց մերոց եւ ամենայնի որ
22 ընդ մեզ. Վասն զի ամաչեցաք խնդրել
ի թագաւորէն [9]հեծեալս՝ ապրեցուցա-
նել զմեզ ի թշնամեացն մերոց ի ճանա-
պարհին. վասն զի ասացաք ցթագաւորն
այսպէս, եթէ Ձեռն [10]Տեառն մերոյ օգնէ
ամենեցուն որ խնդրեն զնա ի բարու-
թիւն. եւ զօրութիւն նորա եւ բար-
կութիւն նորա ի վերայ ամենեցուն որք
23 թողուն զնա: Եւ պահեցաք եւ խնդրե-
ցաք յԱստուծոյ մերոյ վասն այսր ամե-
նայնի, եւ լուաւ [11]Տէր:
24 Եւ առաքեցաք" յիշխանացն քահա-
նայից երկոտասան, զՍարաբիա եւ զԱ-
սաբիա, եւ ընդ նոսա յեղբարց նոցա
25 տասն, Եւ կշռեցաք եւ տուաք ցնոսա
զարծաթ եւ զոսկի եւ զսպաս [12]առաջա-
ւորութեան տանն Աստուծոյ մերոյ,
զոր [13]բարձրացոյց զմեզ" թագաւորն եւ
խորհրդակիցք նորա եւ իշխանք նորա
եւ ամենայն Իսրայէլ որ միանգամ էին
26 անդ. Եւ կշռեալ ետու ցնոսա արծաթ տա-
ղանդս՝ վեց հարեւր յիսուն, եւ կահ ար-
ծաթոյ՝ հարեւր, եւ ոսկւոյ՝ տաղանդս
27 հարեւր, Եւ այլ կահ ոսկւոյ՝ քսան [14]եւ
երեք. եւ կահ պղնձոյ սուրբ եւ մաքուր
28 ոսկեզօծ": Եւ ասացի ցնոսա, Եւ դուք
սրբեալք Տեառն [8]Աստուծոյ էք, եւ ա-
մենայն կահ սուրբ է [8]Տեառն, եւ ոսկե-
զէնք եւ արծաթեղէնք [15]ընտրեալք Տեառն
29 Աստուծոյ հարցն մերոց. Արթուն կա-
ցէք եւ պահեցէք՝ մինչեւ կշռեսջիք
զդոսա առաջի իշխանաց քահանայիցն
եւ Ղեւտացւոցն, եւ իշխանաց հայրա-
պետացն Իսրայելի որ են յԵրուսաղէմ
30 ի խորանս տան Տեառն: Եւ [16]առեալ
քահանայիցն եւ Ղեւտացւոցն" զհամար
ոսկւոյ եւ արծաթոյ եւ զկահս ի տանել
յԵրուսաղէմ ի տուն Աստուծոյ մերոյ:
31 Եւ յարուցեալ չուեցաք ի գետոյն
[17]Էուա որ օր երկոտասան էր ամսոյն ա-
ռաջնոյ, [18]եւ եկեալ հասաք" յԵրուսա-
ղէմ. եւ ձեռն [8]Տեառն Աստուծոյ մե-
րոյ էր ընդ մեզ, եւ փրկեաց զմեզ ի
ձեռաց թշնամեաց մերոց, եւ ի պատե-
32 րազմողաց զճանապարհայն. Եւ եկաք
յԵրուսաղէմ եւ հանգեաք անդ աւուրս
33 երիս: Եւ յաւուրն չորրորդի կշռեալ

[1] Եբր. վերջինքն [2] Եբր. յԱհաւա [3] Եբր. առ Եղնաթան եւ առ Յարիբ եւ առ Եղնաթան եւ առ Նաթան եւ առ Զաքարիա եւ առ Մեսուղամ իշխանս, եւ առ Յովարիբ եւ առ Եղնաթան իմաստունս: (17) Եւ պատուէր տուեալ առաքեցի զնոսա առ Ադդով իշխան որ ի Քասիփիա [4] Եբր. Ադդովայ, ընդ եղբարս նորա Նաթանայիմս ի Քասիփիա՝ ածել առ մեզ պաշտօնեայս վասն տանն Աստուծոյ մերոյ: (18) Եւ ածին [5] Եբր. Մոողեայ, որդւոյ Ղեւեայ, որդւոյ Իսրայելի, այր մի հանճարեղ, այսինքն զՍարաբիա եւ զորդիս նորա եւ զեղբարս նորա ութեւտասն. (19) Նա եւ զԱսաբիա եւ ընդ նմա յորդւոցն Մերարեայ զԵսայի եւ զեղբարս նորա եւ զորդիս նոցա արս քսան. (20) Եւ ի Նաթանայիմեանց [6] Եբր. Նաթանայիմս [7] Եբր. Ահաւայ [8] 3Եբր. [illegible]

[9] Եբր. զօրս եւ հեծեալս [10] Եբր. Աստուծոյ [11] Եբր. մեզ: (24) Եւ որոշեցի [12] Եբր. ի նուէր [13] Եբր. մատուցին [14] Եբր. իւրաքանչիւր ի հազար դրամոց, եւ անօթս երկուս ի փայլուն պղնձոյ պատուական իբրեւ զոսկի [15] Եբր. նուէրք [16] Եբր. առին քահանայքն եւ Ղեւտացիքն [17] Եբր. Ահաւայ [18] Եբր. երթայ

տուաք զարծաթ եւ զոսկի եւ զկահ ի
տուն Տեառն Աստուծոյ մերոյ, ի ձեռս
[1]Մարեմովթ որդի Ոնիայ՝՝ քահանայի,
եւ որ էր ընդ նմա Եղիազար որդի Փե-
նեէսի, [2]եւ Յովզաբաթ որդի Յեսուայ,
եւ Նովադիա որդի Բանեայ, [3]եւ այլ՝՝
34 Ղեւտացիք. Եւ էր թուով եւ համարով
ամենայն, եւ գրեցաւ ամենայն կշիռ
համարոյն բովանդակ ի ժամանակին
յայնմիկ։
35 Որք եկեալ էին ի գերութենէն որդիք
պանդխտութեան, մատուցին ողջակէզս
[3]Տեառն Աստուծոյ Իսրայէլի, զուարակս
երկոտասան վասն ամենայն Իսրայէլի,
խոյս իննսուն եւ վեց, գառինս եւթա-
նասուն եւ եւթն, [4]ամիկս վասն մեղաց
երկոտասան. զայս ամենայն ողջակէզս
36 մատուցին Տեառն [3]Աստուծոյ։ Եւ ետուն
զգիր [5]կարասւոյն, զոր հրամայեալ էր
թագաւորին ցիշխանս կողմանց գետոյն
Եփրատու. եւ փառաւորեցին զժողո-
վուրդն եւ զտաճարն Աստուծոյ՝՝։

Գլ. Թ

1 Եւ ի կատարել այսր ամենայնի՝ մեր-
ձեցան առ իս իշխանքն եւ ասեն, Ոչ
որոշեցան ժողովուրդն Իսրայէլի եւ քա-
հանայքն եւ Ղեւտացիքն ի ժողովրդոց
[6]եւ յերկրէ՝ որ են հեռագոյն ի նոցանէ.՝՝
Քանանացին եւ Քետացին եւ Փերեզա-
ցին եւ Յեբուսացին եւ Ամոնացին եւ
Մովաբացին եւ Եգիպտացին եւ Ամովր-
2 հացին։ Քանզի առարին կանայս ի դստե-
րաց նոցա, ինքեանք եւ որդիք իւր-
եանց. եւ խառնակեալ պղծեցաւ սերմն
սրբութեան [3]նոցա ընդ ժողովուրդ երկրին
այնորիկ, եւ եղեւ սկիզբն անօրէնու-
3 թեանս այսորիկ [7]յիշխանայն։ Եւ եղեւ
յորժամ լուայ ես զբանս զայսոսիկ, պա-
տառեցի զհանդերձս իմ, եւ փետեցի
զհերս եւ զմօրուս իմ, եւ այնպէս
4 նստէի ի սուգ։ Եւ ժողովեցան առ իս ա-
մենեքեան որք էին երկիւղածք [8]յԱս-
տուծոյ Իսրայէլի, որք էին ժողովեալք
յերիցն պանդխտութեան՝՝. եւ ես այն-
պէս նստէի ի սուգ մինչեւ ի ժամ զոհի
5 երեկորին։ Եւ ի զոհել երեկորին՝ յար-
եայ ի տառապանաց իմոց, եւ պատառ-
եալ հանդերձիւք իմովք, խոնարհեալ
կորանայի ի վերայ ծնգաց իմոց. եւ տա-
րածեալ ամբարձեալ զձեռս իմ առ Տէր
6 Աստուած, Եւ ասեմ, Աստուած իմ [9]եւ
Տէր, ամաչեմք եւ զարհուրիմք ի բըն.
բարձրացս, Տէր Աստուած իմ,՝՝ զերեսս
իմ առ քեզ. վասն զի անօրէնութիւնք
մեր բազմացան ի վերայ գլխոց մերոց,
եւ մեղք մեր մեծացան եւ բարձրացան
7 մինչեւ յերկինս։ Յաւուրց եւ ի ժամա-
նակաց հարցն մերոց, եմք մեք ի մեղս
մեծամեծս մինչեւ ցայսօր. եւ վասն մե-
ղաց մերոց մատնեցեր զմեզ եւ զթա-
գաւորս մեր եւ [10]զորդիս մեր ի ձեռս
թագաւորացն հեթանոսաց, ի սուր եւ
ի գերութիւն եւ ի յափշտակութիւն,
եւ յամօթ երեսաց մերոց եղեաք մին-
8 չեւ յօրս յայս։ Եւ [11]այժմ զթութիւնք
քո եղեն ի վերայ մեր, Տէր Աստուած
մեր, եւ շնորհեցեր մեզ փրկութիւն,
եւ հաստատեցեր զմեզ ի տեղի սրբու-
թեան քո, եւ լուսաւորեցեր զաչս մեր
այսօր, Տէր Աստուած մեր. եւ ետուր
մեզ կենդանութիւն փոքր ի չատէ ի
9 ծառայութեանն մերում։ Վասն զի ծա-
ռայ եղաք, եւ ի ծառայութեանն մե-
րում ոչ թողեր զմեզ, Տէր Աստուած
մեր. եւ խոնարհեցան առ մեզ ողոր-
մութիւնք քո առաջի թագաւորին Պար-
սից՝ տալ զմեզ ի կենդանութիւն,
եւ բարձրացուցանել զտուն Աստուծոյ
մերոյ, կանգնել եւ շինել զանապատս
զայս, եւ արկանել ցանգ եւ պարիսպ
ամրութեան Յուդայ եւ Երուսաղեմի։
10 Եւ արդ՝ զի՞նչ տացուք պատասխանի
առաջի քո, [12]Տէր, վասն այսր ամե-
նայնի. քանզի անցաք զօրինօք քովք,
11 Տէր, Եւ զհրամանօք զոր ետուր ի ձեռն
ծառայից քոց մարգարէից, ասելով այս-
պէս եթէ, Երկիրն յոր մտանելոց էս
ժառանգել զնա, է երկիր պղծեալ ի
պղծութեանց ազգաց երկրին այնորիկ,
եւ աղտեղութեամբք իւրեանց լցին
12 զնա[13]։ Եւ արդ մի՛ առնուցուս ի դստե-

[1]Եբր. Մերեմովթայ որդւոյ Ուրիայ [2]Եբր. եւ ընդ նոսա [3]Եբր. պալատն [4]Եբր. Նոխազս [5]Եբր. թագաւորին ցկուսակալս թագաւորին և ցիշխանս որ յայսկոյս Գետոյն, և նոքա եղեն ձեռնտու ժողովրդեանն և տանն Աստուծոյ [6]Եբր. երկրին, այլ առնեն ըստ պղծութեան որպէս [7]Եբր. յիշխանացն և ի վերակացուաց [8]Եբր. ի բանից Աստուծոյ Իսրայէլի վասն յանցանաց գերութեանն

[9]Եբր. ամաչեմ եւ ոչ իշխեմ ամբառնալ [10]Եբր. զքահանայս [11]Եբր. այժմ սակաւ ինչ ժամանակ [12]Եբր. Աստուած մեր [13]Եբր. լցին [illegible], ծայրէ ի ծայր

րաց նոցա կանայս որդւոց քոց, եւ
զդստերս քո մի՛ տացես կանայս որդւոց
նոցա, եւ մի՛ խնդրեսցես ¹տանել խա-
ղաղութիւն ընդ նոսա զամենայն ժա-
մանակս. եւ եղիջիք դուք զօրաւոր ու-
տել զբարութիւն երկրին, եւ ժառան-
գեսցեն որդիք քո զերկիրն զայն յաւիտ-
13 եանս ժամանակաց։ Եւ որ ինչ միան-
գամ անցք անցին ընդ մեզ՝ վասն գոր-
ծոց մերոց եւ չարութեան մեղաց մե-
րոց. այլ դու, Տէր, բազում անգամ
թողեր զմեղս մեր, եւ ետուր մեզ այս-
14 պիսի զաւակ եւ արմատ։ Եւ մեք դարձ-
եալ խոտորեցաք՝ անցեալ զօրինօք քովք,
եւ խառնակեցաք ընդ ապականութիւնս
հեթանոսաց երկրին. եւ ոչ բարկացար
մեզ ի կորուսանել զմեզ մինչեւ ցայս
վայր՝ եթէ ոչ մնացէ արմատ եւ զաւակ
15 եւ անուն մեր։ Տէր, Աստուած Իսրա-
յէլի, դու արդար եւ ճշմարիտ ես, որ
ոչ ապականեցեր զզաւակ մեր, այլ մնաց
մեր արմատ եւ զաւակ մինչեւ ցայսօր.
եւ արդ ահաւասիկ եմք այսօր առաջի
քո յանօրէնութիւնս մեր, եւ ոչ եւս
կարեմք ամբառնալ զգլուխ մեր եւ կալ
առաջի երեսաց քոց. զի բազմացան ա-
նօրէնութիւնք մեր եւ չարիք առաւել
քան զգլուխս մեր"։

ԳԼ. Ժ

1 Եւ յորժամ եկաց Եզրաս յաղօթս հան-
դերձ խոստովանութեամբքս այսոքիւք
եւ ողբովք մեծամեծօք՝ անկեալ էր ի
վերայ երեսաց երկրի ²առաջի Տեառն".
ժողովեցան առ նա ³ամենայն որ էին
յԻսրայէլ" ժողովուրդ բազում, արք
եւ կանայք, երիտասարդք եւ կուսանք,
եւ ողբային ժողովուրդն, եւ համբարձին
2 զձայնս լալոյ իւրեանց։ Եւ պատաս-
խանի ետ ⁴Յեքոնիա որդի Եղեայ որդ-
ւոյն" Եղամայ, եւ ասէ ցԵզրա, Մեք
մեղաք առ Տէր Աստուած մեր, եւ ա-
ռարաք զկանայս այլազգեաց երկրիս
այսորիկ. եւ այժմ ⁵են անօրէնութիւնք
3 այսօր ի մէջ Իսրայէլի"։ Եւ արդ ուխ-
տեսցուք ուխտ առաջի Տեառն Աս-
տուծոյ մերոյ հանել զամենայն կանայս
այլազգիս եւ զզաւակս որ ⁶ի նոցանէ.
եւ արդ որպէս կամիս արի եւ կեցո
զսոսա օրինօքն Տեառն Աստուծոյ եւ
4 որպէս պատուիրանք հրամայեն. Արի
եւ լուիցուք ի բերանոյ քումմէ". եւ
մեք ընդ քեզ. զօրացիր եւ արա ⁷որպէս
եւ հրամայեալ է ի Տեառնէ Աստուծոյ"։
5 Եւ յարուցեալ Եզրայ երդմնեցոյց զիշ-
խանս ցեղից քահանայից եւ Ղեւտաց-
ւոց եւ զամենայն Իսրայէլ առնել ըստ
6 այսմ օրինակի երդման։ Եւ յարուցեալ
Եզրայ յերեսաց տանն Աստուծոյ, երթ-
եալ ի տուն գանձին առ Յոհանան որդի
Եղիսուբայ՝ հաց ոչ եկեր եւ ջուր ոչ
արբ, ⁸եւ ողբացեալ ի վերայ անօրէնու-
թեանն եւ մեծամեծաց մեղաց բազմու-
7 թեանն"։ Եւ քարոզ կարդային ի Հրէ-
8 աստանի եւ ⁹յԵրուսաղէմ. Ամենայն ոք՝
որ ոչ եկեսցէ յԵրուսաղէմ մինչեւ յերիս
աւուրս ¹⁰յիշխանաց եւ ի ծերոցն", ե-
ղիցի նզովեալ ամենայն ստացուածնո-
րա, եւ ինքն ի բաց եղիցի յեկեղեցւոյ
9 ¹¹ժողովրդոցն Իսրայէլի"։ Եւ ժողովեցան
ամենայն արք Յուդայ եւ Բենիամինի
յԵրուսաղէմ յերիս աւուրս, յիններորդ
ամսեանն որ օր քսան էր ամսոյն. եւ
նստան ամենայն ժողովուրդն ի հրա-
պարակի տանն Տեառն. եւ ¹²էին զար-
հուրեալք ի բանից նորա եւ ի ցրտութենէ
10 ձմերայնոյն։ Եւ յարուցեալ Եզրայ" ասէ

¹Եբր. զխաղաղութիւն նոցա եւ մի՛ զբարութիւն նոցա յաւիտեան. զի եղիցես դու զօրաւոր եւ կերիցես զբարութիւն երկրին, եւ թողցես զայն ի ժառանգութիւն որդւոց քոց յաւիտեան։ (13) Եւ յետ ամենայն անցից որ անցին ընդ մեզ վասն գործոց մերոց չարաց եւ վասն մեծաց յանցանաց մերոց, տեսեալ զի դու, Աստուած մեր, ոչ պատժեցեր զմեզ ըստ չափոյ մեղաց մերոց, այլ ետուր մեզ այսպէս մնացորդ. (14) Միթէ արժա՞ն էր մեզ դարձեալ անցանել զօրինօք քովք եւ առնել խնամութիւնս ընդ ազգաց այսոցիկ գարշելեաց. եւ ո՞չ բարկացցիս մեզ եւ սպառեսցես զմեզ մինչեւ չմնալ ի մէնջ մնացորդ եւ փրկեալ. (15) Ով Տէր, Աստուած Իսրայելի, դու արդար ես, զի թողաք մնացորդ որ ապրեցաք, որպէս յաւուր յայսմիկ. ահա կամք առաջի քո յանօրէնութիւնս մեր. քանզի ոչ ոք կարէ կալ առաջի քո վասն այսորիկ ²Եբր. առաջի տանն Աստուծոյ ³Եբր. յԻսրայելէ

⁴Եբր. Սեքենիա որդի Եղեայ յորդւոցն ⁵Եբր. գոյ ակնկալութիւն վասն Իսրայելի յաղագս այսորիկ ⁶Եբր. ի նոցանէ ըստ խորհրդոյ տեառնդ եւ որոց երկնչին ի հրամանաց Աստուծոյ մերոյ. եւ եղիցի այս ըստ օրինաց. (4) Արի, զի քեզ անկ են իրքն ⁷Յեբր. [illegible] ⁸Եբր. զի սուգ առնէր վասն անօրէնութեան գերութեանն ⁹Եբր. յԵրուսաղէմ ամենայն որդւոցն գերութեան ժողովել յԵրուսաղէմ ¹⁰Եբր. ըստ հրամանի իշխանացն եւ ծերոց ¹¹Եբր. գերութեանն ¹²Եբր. դողային վասն բանին այնորիկ և վասն անձրեւացն. (10) Եւ յարուցեալ Եզրաս քահանայ

ցնոսա, Դուք [1]էք որ՝՝ մեղայք, եւ ա-
րարէք կանայս զդստերս այլազգեաց, եւ
յաւելիք զմեղս եւ զանօրէնութիւնս ի
11 վերայ Իսրայելի։ Եւ արդ տուք զօրհ-
նութիւն Տեառն Աստուծոյ հարցն ձե-
րոց, եւ արարէք զհաճոյսն առաջի նո-
րա. եւ զատեալ որոշեցայք յամենայն
հեթանոսաց երկրի եւ ի կանանց այլ-
ազգեաց զորս արարէք։
12 Եւ պատասխանի ետուն ամենայն ե-
կեղեցին եւ [2]ասեն, Մեծ է բանս այս
13 զոր ասես դու ի վերայ մեր. Վասն զի՝՝
ժողովուրդ բազումք եմք, եւ ժամա-
նակս ձմեռն է. եւ ոչ կարեմք կալ ար-
տաքոյ, եւ գործդ ոչ է զմի օր կամ
զերկու, վասն զի սաստիկ մեղաք յիրս
14 յայս։ Կացցեն [3]իշխանք յամենայն տե-
ղիս եւ ի քաղաքս, եւ՝՝ որոց իցէ ա-
րարեալ կանայս [4]յայլազգեաց՝ եկեսցեն
ի ժամանակին զոր ծերքն եւ հայրա-
պետքն կարգեսցեն ի քաղաքս քաղաքս,
եւ զատեալ քակեսցեն զմեղս զայս ի
մէնջ, եւ դարձուսցեն զբարկութիւն՝՝
Աստուծոյ ի մէնջ որ վասն բանիս այ-
16 սորիկ։ [5]Եւ արարին՝՝ այսպէս որ եկեալ
էին ի գերութենէն. եւ [6]ընտրեաց Եզրաս
արս իշխանս ի հայրապետաց տանն իւ-
րոյ՝ զարս անուանիս. եւ շրջեցան՝՝ յամ-
սամտի տասներորդ [7]ամսոյն՝ եւ վճա-
17 րեցին. Եւ որոշեցին զամենայն արս՝՝
որք ունէին զկանայս յայլազգեաց մին-
չեւ ի մուտ ամսոյն առաջնոյ։
18 Եւ գտան յորդւոց քահանայիցն որք
ունէին զկանայս յայլազգեացն, յորդ-
ւոցն Յեսուայ Յովսեդեկեանց եւ [8]եղ-
բօր նորա Մանասէի եւ Եղիազարու,
19 Յարիբ եւ Գադալիա. Եւ ետուն՝՝ հա-
նել զկանայս այլազգեացն յինքեանց,
եւ մատուցին խոյաքանչիւր [9]խոյս վասն
թողութեան մեղացն անգիտութեան։
20 Եւ յորդւոցն Երամ՝՝ Մասիաս, Եղիա,
22 Սամայիա եւ Յեքիէլ եւ Ոզիա. Եւ յորդ-
ւոցն Փասուր՝ Եղիանաս, Մասիէլ, Մի-
սայէլ, Նաթանայէլ, Յովզաբաթ եւ Եղա-
23 սա. Եւ յորդւոցն Ղեւտացւոց՝ Յեզաբաթ,
Սամութ, Կոլիա՝ այս է Կոլիտոս, եւ
Աւխեթիաս եւ Յուդաս եւ Եղիազար.
24 Եւ ի սաղմոսերգացն՝ Եղիասիփ, եւ ի
դռնապանացն՝ Կողէմ, Խաէղէս եւ Ուրի.
25 Եւ յԻսրայելէ, յորդւոցն Փարոսայ՝ Հռա-
մայիա, Յազիա, Մեղքիա, Խակիմ, Եղի-
26 ազար, Ասաբիա, Նիրանիա. Եւ յորդ-
ւոցն Եղամ՝ Մաթթանիա, Զաքարիա,
27 Յաւէլ, Արդիա, Երիմովթ եւ Եղիա. Եւ
յորդւոցն Զաթուայ՝ Եղիոնէ, Եղիասաբ,
Մաթթանա, Յարիմոթ, Զաբադ, Ազիա.
28 Եւ յորդւոցն Բաբէի՝ Յոհանան, Անանիա
29 եւ Զաբու եւ Աթաղի. Եւ յորդւոցն Բանի՝
Մոսողամ, Մաղաք, Ադայիաս, Յասուբ,
30 Սաադ եւ Հռեմովթ։ Եւ յորդւոցն Փաաթ-
մովաբ՝ Ադնէ, Քաղէլ, Բանեա, Մասեա,
Մաթթա, Բեսեէլ, Բանուի, Մանասէ.
31 Եւ յորդւոցն Երամ՝ Եղիեզի, Եսիա,
Մեղքիա, Սամեաս, Սիմէոն, Բենիա-
32 մին, Մաղուք, Սամարիա. Եւ յորդ-
33 ւոցն Ասէմ՝ Մաթթանիա, Մատաթիա,
Զաբաթ, Եղիփաղէտ, Յերեմի, Մանասէ,
34 Սամէի. Եւ յորդւոցն Բանի՝ Մովադիա,
35 Ամրամ, Ուէլ, Բանեա, Բադայիա, Քե-
36 ղիա, Ուանիա, Մարիմովթ, Եղիասիբ,
37 Մաթանիա, Մաթանա. Եւ [10]արարին որ-
38 դիքն Բանի եւ որդիքն՝՝ Սեմէի, Սեղե-
39 միաս, Նաթան, Ադայիաս, Մաքնա,
40 Գայադու, Սէսէ, Արու, Եզրիէլ, Սա-
ղամիաս, Սամարիաս, Սեղում, Ամա-
41 րիաս, Յովսէփ. Յորդւոցն Աբուրէ՝ Յէ-
42 ուէլ, Մատաթիաս, Զաբաթ, Զեբին-
43 նաս, Յադայի, Յաղէ, Յովեղ, Բա-
44 նեա։ Այսք էին ամենեքեան որ ու-
նէին զկանայս յայլազգեացն, եւ ծնան
ի նոցանէ ուստերք եւ դստերք։

[1] Եբր. [illegible] [2] Եբր. ասեն ի ձայն մեծ. Այս-
պէս ըստ բանի քում որ առ մեզ՝ եղիցի. (13)
Այլ [3] Եբր. իշխանք մեր վասն ամենայն ժողո-
վրդեանն, եւ ամենեքին [4] Եբր. յայլազգեաց
ի քաղաքս մեր՝ եկեսցեն ի ժամանակս զոր կար-
գեսցեն, եւ ծերքն և դատաւորք որ ի քաղաքս
քաղաքս եղիցին ընդ նոսա. մինչեւ դարձցի բար-
կութիւնն [5] Եբր. (15) Այլ Յովնաթան որդի
Ասայելի, եւ Յազիա որդի Թեկուայ կարգեցան
ի վերայ այսորիկ, եւ Մեսուղամ եւ Սաբեթա
Ղեւտացիք օգնեցին նոցա։ (16) Եւ արարին
[6] Եբր. ընտրեցան Եզրաս քահանայ եւ արք յիշ-
խանաց հայրապետաց ըստ տոհմից իւրեանց,
եւ ամենեքին յանուանէ, եւ նստան [7] Եբր.
ամսոյն քննել զիրսն. (17) Եւ վճարեցին զգործս
արանցն [8] Եբր. յեղբարց նորա Մաասիա, Եղիա-
զար, Յարիբ եւ Գոթողիա։ (19) Եւ խոստացան

[9] Եբր. խոյս ի հօտից վասն մեղաց, զի էին յան-
ցուցեալք։ (20) Եւ յորդւոցն Եմերի՝ Անանի
եւ Զաբադիա. (21) Եւ յորդւոցն Հարիմայ՝
[10] Եբր. Յասսու (38) Բանի, Բանուի,

# ԳԼՈՒԽՔ ԳՐՈՑՆ ՆԷԵՄԵԱՅ





# ԳԻՐՔ ՆԷԵՄԵԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 ԲԱՆՔ Նէեմեայ որդւոյ Աքաղիայ։
Եւ եղեւ յամսեանն Քասղեւ յամի
քսաներորդի Արտաշիսի արքայի, ես
էի [1]ի Շաւշ ի մայր քաղաքացն արիրայ.
2 Եւ եկն առ իս՝ յեղբարցն իմոց, Նա
եւ արք Յուդայ, եւ հարցի զնոսա վասն
փրկելոցն որք ապրեցան եւ եղին ի գե-
3 րութենէն եւ վասն Երուսաղեմի։ Եւ
ասեն ցիս, Զերծեալքն ի գերութենէն
են անդէն յաշխարհին իւրեանց ի մեծ
նեղութեան եւ ի նախատինս. եւ պա-
րիսպքն Երուսաղեմի կան նոյնպէս քակ-
եալ եւ աւերեալ, եւ դրունք նորա
հրկիզեալ հրով։
4 Եւ եղեւ յորժամ լուայ ես զբանս զայս,
նստայ եւ լայի եւ սուգ առի զաւուրս
եւ պահեցի պահս, եւ կացի յաղօթս ա-
5 ռաջի [2]Տեառն Աստուծոյ երկնից, Եւ
ասեմ, Տէր, Աստուած երկնի [3]եւ երկ-
րի, որ զօրաւորդ ես եւ՝ մեծ եւ ա-
հարկու, պահես զուխտս եւ զողորմու-
թիւնս այք սիրեն զքեզ, եւ այք առնեն
6 զօրէնս քո, Եղիցին ականջք քո ի լսել
եւ աչք քո ի տեսանել. եւ արդ լուր եւ
տես զաղօթս ծառայի քո զոր ես [4]այ-
սօր մատուցանեմ առաջի քո, վասն
որդւոցն Իսրայելի ծառայից քոց, [5]որք
մատնեցաք ի նեղութիւն վասն մեղաց
մերոց զոր մեղաքն. ես՝ եւ տունն հօր
7 իմոյ մեղաք։ Վասն զի յանցանելով
յանցեաք, եւ ոչ պահեցաք զօրէնս եւ
զհրամանս եւ զդատաստանս քո զոր
պատուիրեցեր մեզ ի ձեռն ծառային քո
8 Մովսիսի։ Յիշեա, Տէր, զբանն քո զոր
պատուիրեցեր ծառային քո Մովսիսի եւ
ասացեր, Եթէ դուք ոչ պահեսջիք զօ-
րէնս իմ, եւ ես ցրուեցից զձեզ ընդ
9 հեթանոսս. Եւ եթէ դարձջիք եւ պա-
հիցէք զօրէնս իմ եւ արասջիք զնոսա,
եւ եթէ իցէք ցրուեալք մինչեւ ի ծագս
[6]երկրի, եւ անտի ժողովեցից եւ ածից
զձեզ ի տեղին զոր [7]ընտրեցից եւ յո-
10 րում բնակէ անուն իմ ի նմա՝։ Եւ արդ
սոքա ծառայք քո եւ ժողովուրդք զորս
փրկեցեր զօրութեամբ քով մեծաւ եւ
11 բարձր բազկաւ։ [8]Մի՛ թողուր ի ձեռաց.
այլ՝ եղիցին ականջք քո հայել յաղօթս
ծառայից քոց, եւ անսալ խնդրուածոց
որոց երկնչին յանուանէ քումմէ. եւ
յաջողեա զխնդրուածս ծառայի քո այս-
օր, եւ տուր ինձ գտանել զթութիւնս
առաջի առնս այսորիկ։ Եւ ես էի մա-
տռուակ թագաւորին։

## ԳԼ. Բ

1 Եւ եղեւ յամսեանն Նիսան ի քսանե-
րորդ ամի Արտաշիսի արքայի, [9]եւ
խնդրեաց յինէն գինի՝. եւ առեալ զգի-
նին ետու թագաւորին, եւ [10]էր թա-
2 գաւորն միայն։ Եւ յորժամ արբ զգինին,
ասէ ցիս՝, Ընդէ՞ր տրտում եւ տխուր
են երեսք քո. եւ [11]ոչ ինչ են այսմ
պատճառք, եթէ ոչ չարութիւն՝ սրտի
3 քո. եւ ես երկեայ յոյժ։ Եւ ասեմ ցթա-
գաւորն, Արքայ, դու յաւիտեան կեաց.
ընդէ՞ր ոչ տրտում եւ տխուր լինիցին ե-
րեսք իմ. վասն զի [12]քաղաքն եւ տունն
հօր իմոյ՝ անապատ է, եւ դրունքն ա-
4 պականեալ ի հրոյ։ Եւ ասէ ցիս թագա-
ւորն, [13]Վասն որո՞յ իրաց խնդրես դու
զայս՝։ Եւ կացեալ իմ յաղօթս [14]եւ ամ-

[1] Եբր. ի բերդաքաղաքին Շաւշ, (2) Եւ եկն Անանի, մին [2] Յեբր. պ–ի–ե [3] Եբր. որ ես Աստուած [4] Եբր. այսօր զցայգ և զցերեկ [5] Եբր. խոստովանեալ զմեղս որդւոցն Իսրայելի զոր մեղաք քեզ. քանզի ես

[6] Եբր. երկնից [7] Եբր. ընտրեցի բնակեցուցանել զանուն իմ անդ [8] Եբր. ՈՀ, Տէր, [9] Եբր. կայր առաջի նորա գինի [10] Եբր. իմ չէր երեւեալ առաջի նորա տրտում։ (2) Եւ ասէ ցիս թագաւորն [11] Եբր. դու չես հիւանդ, եթէ ոչ տխրութիւն [12] Եբր. քաղաքն որ է տեղի գերեզմանաց հարց իմոց [13] Եբր. Զի՞նչ խնդրես դու վասն իրացս այսոցիկ [14] Եբր. առ

բարձեալ զմիտս իմ առ Տէր՝՝ Աստուած
5 երկնից, Ասեմ ցԹագաւորն, [1]Եղիցի ի
վերայ Թագաւորութեանդ քում բարու-
թիւն՝՝, եւ եթէ եղիս ծառայ քո շնորհս
առաջի երեսաց քոց, [2]եւ կամիս՝՝ յղեա
զիս ի Հրէաստան [3]ի քաղաք յիշատա-
կարանաց՝՝ հարցն իմոց, եւ ես [2]բանիւ
6 հրամանի քո՝՝ շինեցից զնա։ Եւ ասէ
ցիս Թագաւորն, եւ [4]հարճ նորա՝՝ որ
նստէր առ նմա, Ցո՞րժամ ժամանես
դու, եւ կամ ե՞րբ դարձցիս. եւ [5]սիրար
առ իս բարութիւն Թագաւորն եւ ար-
ձակեաց՝՝ զիս. եւ ես կալայ առ նմա
7 ժամանակ։ Եւ ասացի ցԹագաւորն, Եթէ
գտի շնորհս առաջի քո, տուր ինձ
Թուղթս առ իշխանս կողմանց Գետոյն,
եւ տարցին զիս մինչեւ երթայց ի Հրէ-
8 աստան, Եւ Թուղթ մի առ Ասափ, որ
է պահապան դրախտին արքունի. զի
տացէ ինձ փայտս ի կազմած [6]դրանցն
եւ պարսպաց քաղաքին, եւ տանն յոր
ես մտից անդր։ Եւ ետ ինձ Թագաւորն.
վասն զի ձեռն Աստուծոյ իմոյ էր ընդ
իս բարութեամբ։
9 Եւ եկի առ իշխանս [7]Գետոյն, եւ ե-
տու առ նոսա զԹուղթս Թագաւորին.
եւ առաքեաց ընդ իս Թագաւորն ա-
10 ռաջնորդս զօրաւորս եւ ձիս։ Եւ լուաւ
Սանաբաղատ [8]իշխան, եւ Տուբիա ծա-
ռայ [9]Ամոնի, եւ չար Թուեցաւ առաջի
[10]նոցա. վասն զի խնդրեցի արս ի բա-
11 րութիւնս եւ ի պէտս՝՝ Իսրայելի։ Եւ
եկի յԵրուսաղէմ, եւ եղէ անդ աւուրս
երիս։
12 Եւ յարեայ ի գիշերի ես եւ սակաւ
արք ընդ իս. եւ ոչ պատմեցի արանցն,
եթէ զի՞նչ Աստուած արկ ի սիրտ իմ
առնել [11]վասն Իսրայելի՝՝. եւ գրաստ ոչ
էր ընդ իս, բայց միայն գրաստն յորոյ
13 վերայ նստէի ես։ Եւ ելի ես ընդ դուռն
[12]հեղեղատին, եւ առ բերանով երկրի
Թզենւոյն՝ եւ մինչեւ ի դուռն Աղբերցն.
եւ ճնչէի ի նեղութենէ անցին առ
պարսպաւն Երուսաղեմի, զոր էին նոցա
սրբեալ, եւ դրունք նորա ապականեալ
14 էին ի հրոյ՝՝։ Եւ անցի ընդ դուռն Աղ-
բերն առ Ջրրղխօք Թագաւորին. եւ ոչ
էր անդ տեղի գրաստու իմոյ անցանել
15 ընդ նա հեծեալ։ Եւ ելանէի ի վեր [2]ի
պարիսպն առ հեղեղատաւն գիշերի,
եւ [13]ի նեղութենէն էի ճնչեալ ի պա-
16 րըսպէն, եւ էի առ դրան՝՝ Ձորոյն։ Եւ
դարձայ, եւ ոչ գիտացին պահապանքն
եթէ ո՞ւր էի երթեալ եւ կամ զի՞նչ առ-
նէի, եւ Հրէից եւ քահանայից եւ
պատուականաց եւ զօրագլխաց եւ այ-
լոց որք վճարէին զիրս գործոյն՝ մին-
չեւ [14]ցայն վայր ոչ պատմեալ էր նոցա՝՝։
17 Եւ ասացի ցնոսա, Դուք տեսէք զչա-
րիսս յորում եմք այժմ, եւ զիարդ Ե-
րուսաղէմ անապատ է եւ դրունք սորա
հրկէզ. եկայք եւ շինեսցուք զպարիսպս
Երուսաղեմի, եւ ոչ եւս եղիցուք ի նա-
18 խատինս։ Եւ պատմեցի նոցա զձեռն
Տեառն որ էր ընդ իս բարութեամբ,
եւ զբանս Թագաւորին զոր ասաց ցիս.
եւ [15]ասեմ ցնոսա՝՝, Արդ եկայք յարի-
ցուք եւ շինեսցուք. եւ զօրացան ձեռք
նոցա ի բարութիւն։
19 Եւ լուաւ [16]Սանաբաղատ եւ Տուբիա
ծառայ [17]Ամոնի եւ Գեսամ Արաբացի,
եւ ծաղր առնէին զմեզ. եւ եկին առ
մեզ եւ ասեն ցմեզ, Զի՞նչ են իրքդ այդ
զոր դուքդ առնէք, եւ կամի՞ք դուք ի
20 Թագաւորէն ապստամբել։ Եւ ետու պա-
տասխանի նոցա եւ ասեմ, Աստուած
երկնից [18]եւ երկիր յաջողեաց՝՝ մեզ, եւ
մեք ծառայք նորա [19]եմք սուրբք, եւ
շինեմք զքաղաքս՝՝, եւ ձեզ ոչ գոյ բա-
ժին եւ յիշատակ եւ [20]արդարութիւն յԵ-
րուսաղէմ։

## Գլ. Գ

1 Եւ յարեաւ Եղիասիբ քահանայ մեծ եւ
եղբարք նորա քահանայք, եւ շինեցին
զդուռն [21]Աւազանաց Ջրմղին՝՝, եւ սրբե-
ցին զնա եւ կանգնեցին զդրունս նորա,
եւ [22]կանգնեցին զնա մինչեւ՝՝ յաշտա-

[1] Եբր. Եթէ հաճոյ Թուեսցի արքայի, [2] Եբր. դ-յ--ե [3] Եբր. ի քաղաքն գերեզմանաց [4] Եբր. ղշխոյն [5] Եբր. Հաճոյ Թուեցաւ արքայի յղել [6] Եբր. դրանց ապարանից տանն [7] Եբր. որ յայնկոյս Գետոյն [8] Եբր. Որոնացի [9] Եբր. Ամմոնացի [10] Եբր. Նոցա յոյժ, զի եկն այր որ խնդրէր ·բարութիւն որդւոցն [11] Եբր. վասն Երուսաղէմի [12] Եբր. Հեղեղատին գիշերայն առ աղբերբ Վիշապին մինչեւ ի դուռն Աղբեւացն, եւ դիտէի զպարիսպն Երուսաղեմի կործանեալս եւ զդրունսն այրեալս ի հրոյ

[13] Եբր. տեսի զպարիսպն. եւ դարձեալ մտի ընդ դուռն [14] Եբր. ցայժմ չասացի ինչ [15] Եբր. ասեն նոքա [16] Եբր. Սանաբաղատ Որոնացի [17] Եբր. Ամմոնացի [18] Եբր. յաջողեսցէ [19] Եբր. յարիցուք եւ շինեսցուք [20] Եբր. իրաւունք [21] Եբր. Ոչխարաց [22] Եբր. սրբեցին զնա մինչեւ յաշտարակն Մէայ, մինչեւ

2 րակն Անամայելի, [1]ի ձեռն որդւոց ա-
րանց Երիքովի, եւ ի ձեռն որդւոց Զա-
3 քուր, որդւոցն Ամարի։ Եւ զդուռնն
Նեքսիւրբան շինեցին որդիքն Սանայ",
եւ նոքա յարդարեալ կազմեցին զնա,
4 եւ զփականս եւ զնիգս նորա. [2]Եւ ի
ձեռանէ նոցա ունէին Մոսողամ որդի
Բարաքի որդի Մասիղիբէլ. եւ ի ձեռանէ
նոցա ունէին Սադովկ որդի Բաանայ.
5 Եւ ի ձեռանէ նոցա ունէին Թեկուա-
ցորեմ. եւ ոչ արկին զպարանոցս ի ծա-
6 ռայութիւն նոցա։ Եւ զդուռնն հին ու-
նէին Յուդայ որդիք, Փասեկ" եւ Մե-
սողամ՝ որդի Բասոդեայ. եւ սոքա կազ-
մեցին զնա, եւ կանգնեցին զդրունս նո-
8 րա եւ զզռնափակս եւ [3]զնիգս։ Եւ զհետ
նոցա ի կարգին կալաւ Անանիա որդի
Հռոսէկէլիմ եւ նթող Երուսաղեմացւոցն
9 մինչեւ ի պարիսպն հրապարակաց։ Եւ
զհետ նոցա կալաւ Հռափիա իշխան կող-
10 մանց անդեացն Երուսաղեմի. Եւ ի ձե-
ռանէ նորա կալաւ Յերադիա որդի Յե-
րոմաք, եւ ի կողմանէ տանն իւրոյ. եւ
ի ձեռանէ նորա կալաւ Ասասուս որդի
11 Սաբանեայ։ Եւ երկրորդ կալաւ" Եղքի-
աս որդի Երամ, եւ Ասուբ որդի Փա-
ադմովաբ, մինչեւ յաշտարակն Թանու-
12 րիմ. Եւ [4]ի ձեռանէ նորա կալաւ" Սա-
ղում որդի Աղոհեմ՝ իշխան կիսոյ կող-
մանն Երուսաղեմի, ինքն եւ դստերք
13 իւր։ Եւ զդուռն Ձորոյն [5]կալաւ Անուն,
եւ որք բնակեալ էին Զանու. նոքա շի-
նեցին զնա, եւ կանգնեցին զդրունս
նորա եւ զզռնափակս եւ զնիգս. եւ հա-
զար կանգուն շինեցին ի պարսպէն մինչ
14 ի դուռն Մոխրոցին։ Եւ զդուռն Մոխ-
րոցին կալաւ Մեղքիա որդի Հռեքաբ՝
իշխան անդեացն Բեթաքարմայ, [6]ինքն
եւ անդիք իւր. եւ յարկին զնա եւ
կանգնեցին" զդրունս եւ զփակս եւ
15 զնիգս նորա։ [7]Եւ զպարիսպ Ջրբղխ
աղբերին կալաւ Սադոն՝ իշխան" Թագա-
ւորին, մինչեւ յաստիճանսն որ իջանէ
16 ի քաղաքէն Դաւթի։ Եւ զհետ նորա
[8]կալաւ Նէեմիաս որդի Ազբուք՝ իշխան
կողմանն Բեթսուր մինչեւ ի պարտէզ
անդեացն Դաւթի, մինչեւ ի Ջրբղխն
կազմելոյ", եւ մինչեւ ցԲեթագաբարին.
17 Եւ զհետ նորա կալան Ղեւտացիքն,
Հռաւում որդի Բանեայ. [9]եւ ի ձեռանէ
նոցա կալաւ Ասաբիա՝ իշխան կողմանցն
18 Կէիլայ". Եւ զհետ նորա կալան եղբարք
նորա, Բենայի որդի Ադադ՝ իշխան
19 [10]կողմանցն Կէիլայ։ Եւ զհետ նորա կա-
լաւ Ազուր որդի Յեսու, իշխան Մաս-
փեայ, [11]չափ երկրորդ պարսպին, որ
ելանէր եւ խառնէր յանկիւնս աշտարա-
20 կին"։ Եւ զհետ նորա կալաւ Բարուք
որդի Զաբու, [12]չափ երկրորդ յանկիւ-
նէն մինչեւ ի դուռն Բեթեղիասուբ, ուր
21 կայր քահանայն մեծ"։ Եւ զհետ նորա
կալաւ Մերամովթ որդի Ուրիայ, որդի
Ակովս, [13]չափ երկրորդ ի դրանցն Բե-
թեղիասուբ" մինչեւ ի սպառուած նորա։
22 Եւ զհետ նորա կալան քահանայքն արք

---

[1] Եբր. Եւ առընթեր նորա շինեցին արքն Երիքովի. և առընթեր նոցա շինեաց Զաքուր որդի Իմրեայ։ (3) Եւ զդուռն Ձկանցն շինեցին որդիքն Սենաայ

[2] Եբր. Եւ առընթեր նոցա նորոգեաց Մերամովթ որդի Ուրիայ որդւոյ Ակովսայ. եւ առընթեր նոցա նորոգեաց Մեսուղամ որդի Բարաքեայ որդւոյ Մասիզեբեղայ. եւ առընթեր նոցա նորոգեաց Սադովկ որդի Բաանայ. (5) Եւ առընթեր նոցա նորոգեցին Թեկուացիք. այլ իշխանք նոցա ոչ խոնարհեցուցին զպարանոց իւրեանց ի գործ Տեառն իւրեանց։ (6) Եւ զդուռնն հին նորոգեցին Յովիադա որդի Փասեայ

[3] Եբր. զնիգս։ (7) Եւ առընթեր նոցա նորոգեցին Մեղատիա Գաբաւոնացի եւ Յադոն Մերոնոթացի, արք Գաբաւոնի եւ Մասփայ, մինչեւ յաթոռ անդր իշխանին որ յայնկոյս Գետոյն. (8) Առընթեր նորա նորոգեաց յոսկերչաց անտի Ոզիէլ որդի Հարհայայ. եւ առընթեր նորա նորոգեաց Անանիա որդի դեղագործաց. եւ թողին զԵրուսաղէմ մինչեւ ի պարիսպն լայն. (9) Եւ առընթեր նոցա նորոգեաց Հռափայիա որդի Ովրայ իշխան կիսոյ մասին Երուսաղեմի. (10) Եւ առընթեր նոցա եւ յանդիման տան իւրոյ նորոգեաց Յեդայիա որդի Հարումափայ. եւ առընթեր նորա նորոգեաց Քետտուս որդի Ասաբանեայ։ (11) Զերկրորդ բաժինն նորոգեցին

[4] Եբր. առընթեր նորա նորոգեաց

[5] Իմա. նորոգել, այսպէս և ի ներքոյ [6] Եբր. նա շինեաց զնա եւ կանգնեաց [7] Եբր. Եւ զդուռն Աղբերն նորոգեաց Սեղղում որդի Քողոզեայ, իշխան կողմանցն Մասփայ. նա շինեաց զնա եւ յարկեաց, եւ կանգնեաց զդրունս նորա եւ զզռնափակս և զնիգս, եւ զպարիսպ աւազանին Սիլովայ որ մօտ ի պարտէզ անդր [8] Եբր. նորոգեաց Նէեմիա որդի Ազբուքայ իշխան կիսոյ մասին Բեթսուրայ մինչեւ յանդիման գերեզմանացն Դաւթի, եւ մինչեւ ի ջրբուխն կազմեալս

[9] Եբր. առ նմա Ասաբիա իշխան կիսոյ մասին Կէիլայ, նորոգեաց զիւր անդին [10] Եբր. կիսոյ մասին [11] Եբր. զմեւս եւս մասն, ի կողմանէ երից անկեան տան զինուց [12] Եբր. փողփողակի զմեւս եւս մասն յանկենէն մինչեւ ի դուռն տանն Եղիասիբ քահանայի մեծի [13] Եբր. զմեւս եւս մասն ի դրանց տանն Եղիասիբայ

Աքերայ. եւ զհետ նորա կալաւ Բենի-
ամին եւ Ասուբ առաջի տանց իւրեանց։
23 Եւ զհետ նորա [1]կալաւ Ազարիա որդի
Մաասու, որդի Անանեայ՝ մօտ առ տամբն
24 իւրով։ Եւ զհետ նորա կալաւ Բանի
որդի Ենադադայ, [2]չափ երկրորդ" ի Բե-
թազարայ մինչեւ յանկիւնն. եւ շրջան
25 դարձի տեղւոյն. Կալաւ Փաղաք որդի
Ուզայի՝ ընդդէմ անկեանն. եւ զաշտա-
րակն որ էր արտաքոյ ապարանից թագա-
ւորին վերագոյն քան զգաւիթ բանտին. եւ
զհետ նորա Փաթաւա որդի Փարոսայ։
26 Եւ Նաթանայիմքն որ բնակեալ էին
յՈփաղ [1]պարտիզի դրան Ջրոյն կող-
մանն արեւելից, եւ աշտարակն որ
27 արտաքոյ կողմանն։ Եւ զհետ նորա
կալան Թեկուացիքն, [2]չափ երկրորդ"
ընդդէմ աշտարակին մեծի, որ էր
արտաքոյ մինչեւ ի պարիսպն Ոփեղայ։
28 Եւ վերագոյն դրան Ձիոյն կալան քա-
հանայքն՝ այր իւրաքանչիւր հանդէպ
29 տանց իւրեանց։ Եւ զհետ նորա կալաւ
Սադովկ որդի Եմեր, հանդէպ տան իւ-
րոյ. եւ զհետ նորա կալաւ Սամէիա
որդի Սեքենեայ, որ էր պահապան դրանն
30 արեւելից։ Եւ զհետ նորա կալաւ Անա-
նիա որդի Սեղեմեայ, եւ Անան [3]որդի
Սեղեփայ, [2]չափ երկրորդ". եւ զհետ նո-
րա կալաւ Մեսողամ որդի Բարաքայ՝
31 ընդդէմ [4]գանձու տանն" իւրոյ։ Եւ զհետ
նորա կալաւ Մեղքիա որդի Սարեփի,
մինչեւ [5]ի Բեթանաթան. եւ այլ մեծա-
տունք քաղաքին" հանդէպ դրանն Մափ-
32 կաթ մինչեւ յելս շրջանակին։ Եւ [6]ի
մէջ դրանն Ջրրղխացն կալան Քեղկիա
եւ մեծատունք քաղաքին"։

## ԳԼ. Դ

1 Եւ եղեւ իբրեւ լուաւ Սանաբաղատ,
եթէ շինեմք զպարիսպն [7]եւ կանգնեմք
զաշտարակս նորա, չար թուեցաւ ա-
ռաջի նորա", եւ զայրացեալ ուժգին
2 ծաղր առնէր [8]զՀրէաստան։ Եւ ասէր
առաջի եղբարց [9]իւրոց. Ա՞յս է զօրու-
թիւն ձեր, ով Սամարացիք. եւ զի՞րդ
Հրեայք շինեն եւ ամրացուցանեն զքա-
3 ղաքս իւրեանց։ Եւ Տուբիա Աման ի
տես եկեալ առ նոսա ասէր, Մի՛ կարի-
ցեն շինել եւ զոհել զոհս, եւ կամ ու-
տել զնուէրս ի տեղւոջ իւրեանց. եւ
ո՞չ ելանեն այժմ աղուէսք եւ քակեն
զքարինս պարսպաց նորա։ Եւ ասեմք
4 մեք," Լուր մեզ, Տէր Աստուած մեր,
զի եղաք մեք յարհամարհանս եւ ի
թշնամանս, եւ դարձո զնախատինս նո-
ցա ի գլուխս իւրեանց. եւ տուր զնոսա
5 ի թշնամանս առաջի գերչաց նոցա. Եւ
մի՛ ծածկեսցին անօրէնութիւնք [10]նոցա։
7 Եւ եղեւ իբրեւ լուան Սանաբաղատ եւ
Տուբիա, Արաբացիք եւ [11]Ամոնացիք,
թէ աջողեցաւ շինուած պարսպին Երու-
սաղեմի, եւ [12]սկսաք իւրաքանչիւր տե-
ղեացն զգործն երեւեցուցանել, թուե-
8 ցաւ չար առաջի նոցա". Եւ ժողովեցան
ամենեքեան ի միասին՝ գալ եւ պատե-
9 րազմել ընդ [13]Երուսաղեմի։ Եւ կացաք
յաղօթս առ [1]Տէր Աստուած մեր, եւ
կացուցաք պահանորդս ի վերայ մեր ի
տուէ եւ ի գիշերի առ ի յերեսաց թշնա-
10 մեացն։ Եւ ասեն արք Հրէաստանի, [14]Ոչ
բաւեմք այսպիսի՝ պատերազմել եւ շի-
նել միանգամայն. այլ ոմանք կալով կաց-
11 ցեն զինու, եւ ոմանք շինեսցեն"։ Եւ
ասեն որք զմեզ նեղէինն. Ոչ տամք նո-
ցա գիտել եւ ոչ տեսանել, մինչեւ յիւ-
րաքանչիւր տեղեաց յարուցեալ եկես-
ցուք ի մէջ նոցա եւ սպանցուք զնոսա,
12 եւ խափանեսցուք զգործս նոցա։ Եւ եղեւ
իբրեւ եկին Հրեայքն որ բնակեալ էին

[1]Եբր. դ-խ-ու-է [2]Եբր. զմեւս եւսման [3]Եբր. վեցերորդ որդի [4]Եբր. սենեկի [5]Եբր. ի տուն Նաթանայիմայցն եւ վաճառականաց [6]Եբր. յելից անտի անկեանն մինչեւ ի դուռնն Ոչխարաց նորոգեցին ոսկերիչքն եւ վաճառականք [7]Եբր. ցասումն եղեւ նմա [8]Եբր. զՀրեայս

[9]Եբր. իւրոց, եւ զօրուն Սամարիայ եւ ասէ, Զի՞նչ առնեն Հրեայքս այսպէս ապաժամանք. միթէ թողցի՞ նոցա. միթէ մատուսցե՞ն զոհս, եւ վճարեսցե՞ն այսօր. միթէ յարուսցե՞ն զքարինսն ի հողակուտէն, եւ նոքա այրեցեալք են։ (3) Եւ Տուբիա Ամմոնացի էր առ նմա, և ասէ, Եթէ աղուէս մի ելս ելցէ, յոր շինենն նոքա, կործանեսցէ զպարիսպ նոցա քարուշէն։ [10]Եբր. նոցա. եւ մի՛ ջնջեսցին մեղք նոցա առաջի քո. զի բարկացուցին առաջի շինողացն։ (6) Եւ շինեցաք զպարիսպն և կապեցաւ պարիսպն մինչեւ ի կէս, զի էր սիրտ ժողովրդեանն ի շինել [11]Եբր. Ամմոնացիք եւ Ազովտացիք [12]Եբր. սկսան խրամատիքն լնուլ, ցասումն եղեւ նոցա յոյժ [13]Եբր. Երուսաղեմի, եւ առնել նմա վնաս [14]Եբր. Սպառեցաւ զօրութիւն բեռնակրաց, եւ հող բազում է, եւ մեք ոչ բաւեմք շինել ի պարսպին

[1]ի տեղիս տեղիս, եւ ասացին ցմեզ",
եթէ Ելանեն յանկարծակի յամենայն տե-
ղեաց ի վերայ մեր։
13 Եւ կացուցի ի խոնարհագոյն տեղւոն
յետոյ պարսպին ընդ յարկօքն՝ [2]զորս հան-
դերձ զինու եւ գեղարդեամբ եւ աղե-
14 ղամբ իւրեանց։ Եւ իմ յարուցեալ ա-
սեմ ցարսն որ կազմ պատրաստեալ կա-
յին, եւ ցզօրավարսն նոցա՝ եւ ցայնս
որ տեղեաց տեղեաց պահապանքն էին,
Մի՛ երկնչիք յերեսաց նոցա, յիշեցէք
[3]զԱստուած մեր" զմեծ եւ զահարկու, եւ
պատերազմեցարուք վասն եղբարց ձե-
րոց, եւ վասն կանանց եւ որդւոց եւ
դստերաց եւ տանց ձերոց։
15 Եւ եղեւ յորժամ լուան թշնամիքն
մեր եթէ իմացաք [4]եւ կազմեալ պատ-
րաստեցաք", ցրուեաց Աստուած զխոր-
հուրդս նոցա, եւ մեք ամենեքեան դար-
ձաք ի շինել զպարիսպն՝ այր յիւրաքան-
16 չիւր գործ իւր։ Եւ եղեւ յօրէ յայնմա-
նէ, [5]կէսքն կարգեալ լինէին ի գործն,
եւ կէսքն զինեալ ընդդէմ թշնամեացն
եւ գեղարդն եւ ասպար եւ աղեղն ի
ձեռին իւրեանց, եւ [6]իշխանք պատրաստ
այր իւրաքանչիւր յետոյ եղբօր իւրում
17 որ շինէր զպարիսպն։ Եւ էր ժամ զի
օգնէր եղբօր իւրում՝ կրելով զզէնն ի
ձեռին իւրում, եւ միւսով ձեռամբն
տայր ցեղբայր իւր զխիճն կամ զտա-
18 գաւն"։ Եւ որք շինէինն՝ ունէր այր զսու-
սեր իւր ընդ մէջ իւր [7]եւ զմիասայրի ի վե-
րայ բարձի իւրոյ, եւ այնպէս շինէին զպա-
րիսպն Երուսաղեմի". եւ որ հարկանէր
զփողն եղջերեայ՝ կայր մօտ [8]առ նոսա։
19 Եւ ասեմ ցայնս որք կային զինեալ եւ
պատրաստեալ, եւ ցիշխանս նոցա",
Գործս մեծ եւ ընդարձակ է, եւ մեք
ցրուեալ եմք ի շինուած պարսպիս, եւ
հեռի եմք ի միմեանց այր յեղբօրէ իւրմէ.
20 [9]Արդ կացուցէք ի տեղիս տեղիս զարսն
որ հարկանեն զփողսն, եւ յորժամ լսիցէ
ք" զձայն եղջեր փողոյն, անդր ժողո-
վեսջիք ամենեքեան, եւ Աստուած մեր
պատերազմեսցի ընդ թշնամիս մեր վասն
21 մեր։ Եւ կէսքն գործէին եւ կէսքն ու-
նէին զզէնսն պատրաստ, ի ծագելոյ ա-
ռաւօտուն մինչեւ յելանել աստեղն։
22 Եւ ասեմ ես ցարս ժողովրդեանն, [10]Ե-
կեսցուք եւ բնակեսցուք ի մէջ քաղա-
քիս Երուսաղեմի, եւ զցայգ պահ արկ-
ցուք զմեւք շուրջ, եւ զցերեկ գործես-
23 ցուք։ Եւ կացի ես" եւ արքն շուրջ
զինեւ որ պահէին զիս, եւ ոչ ոք ի մէնջ
մերկանայր եւ կամ հանէր զզէն իւր
յինքենէ։

Գլ. Ե

1 Եւ եղեւ աղաղակ մեծ ժողովրդեանն
եւ կանանց իւրեանց՝ այր առ եղբայր
2 [11]իւր. Եւ ասէին, Վասն որդւոց մերոց եւ
դստերաց մերոց, որոց պակասեցին կե-
րակուրք, երթիցուք գնեսցուք" եւ կեց-
3 ցուք։ Եւ ոմանք ասէին, Զանդաստանս
մեր եւ [12]զայգիս գիցուք ի գրաւի, եւ
4 առցուք ցորեան [13]եւ կերիցուք"։ Եւ էին
ոմանք որ ասէին, Տուաք զհասացուածս
մեր, եւ առաք ոսկի եւ արծաթ, եւ
5 տուաք ի հարկս թագաւորի։ Եւ արդ
որպէս մարմինք եղբարց մերոց են մար-
մինք մեր, եւ որպէս որդիք նոցա՝ որ-
դիք մեր. եւ արդ ընդէ՞ր տուաք մեք
[14]զորդիս մեր ի ծառայութիւն, եւ դստերք
մեր վարեալ են ի բռնութիւն, եւ ոչ
դոյ ի ձեռս մեր կար՝ [15]որով փրկեսցուք
զնոսա"։
6 Եւ տրտմեցայ ես յոյժ յորժամ լուայ
7 զաղաղակն եւ զբանս նոցա։ Եւ արարի
խորհուրդ ընդ միտս իմ. եւ կալեայ ընդ
պատուականս եւ ընդ իշխանս նոցա, եւ
ասեմ ցնոսա, Դուք էք որ խնդրէք [16]զհարկս
յեղբարց ձերոց. եւ [17]հրամայեցի նոցա լի-
8 նել" ժողով մեծ։ Եւ ասեմ ցնոսա, Մեք
փրկեցաք զեղբարս մեր զՀրեայս որ
վաճառեցան հեթանոսաց, [18]զոր մեք ոչ

[1] Եբր. առ նոսա, և ասացին ցմեզ տասնից [2] Եբր. արս ըստ տոհմից իւրեանց [3] Եբր. զՏէր [4] Յեբր. պակասէ [5] Եբր. կէսքն ի մանկանց իմոց [6] Եբր. իշխանքն յետոյ ամենայն տան Յուդայ. (17) Որ շինէինն զպարիսպն եւ բեռնակիրքն եւ որ զբեռինսն բառնային, միով ձեռամբ գործէին, եւ միւսովն ունէին զզէնն [7] Եբր. եւ այնպէս շինէին [8] Եբր. առ իս։ (19) Եւ ասեմ ցիշխանս եւ ցվերակացուս եւ ցմնացորդ ժողովրդեանն
[9] Եբր. Յորում տեղւոջ և լսիցէք

[10] Եբր. իւրաքանչիւր ոք և մանուկ նորա ագցեն ի մէջ Երուսաղեմի, եւ զցայգ պահ արկցեն զմեւք շուրջ, եւ զցերեկ գործեսցեն։ (23) Եւ ոչ ես եւ ոչ եղբարք իմ եւ մանկունք իմ
[11] Եբր. իւր Հրեայ. (2) Եւ էին որ ասէին, Ուստերք մեր եւ դստերք բազում եմք. գնեսցուք ցորեան և կերիցուք [12] Եբր. զայգիս մեր եւ զտունս մեր [13] Եբր. վասն սովոյ [14] Եբր. զուստերս եւ զդստերս [15] Եբր. զի արտք մեր եւ այգիք են այլոց [16] Եբր. վաշխս [17] Եբր. գումարեցի ընդդէմ նոցա [18] Եբր. ըստ կարի մերում. եւ դուք վաճառէ՞ք զեղբարս ձեր, եւ վաճառեսցի՞ն նոքա մեզ.

գիտացաք, եւ դուք վաճառեցէք զնո-
սա"։ Եւ լռեցին, եւ ոչինչ կարացին տալ
9 պատասխանի։ Եւ ասացի, Ոչ բարւոք է
գործդ զոր դուքդ առնէք, [1]վասն զի ոչ
երկնչիք յԱստուծոյ․ եւ վասն այսորիկ
ոչ եւս զերծաք մեք ի նախատանաց հե-
10 թանոսաց, ի թշնամեաց մերոց։ Եւ
ասեմ ես ցեղբարսն իմ եւ ցծանօթս, Եւ
ես եւ դուք տացուք արծաթ եւ ար-
գիւնս ի փրկանս զոր խնդրեն հարկա-
11 հանքդ, Եւ դարձուսցուք" այսօր զսն-
դաստանս՝ զայգիս եւ զձիթենիս եւ
զտունս գոցա․ [2]եւ ընդ արծաթոյ մերոյ
գնեսցեն զցորեան՝ զգինի եւ զձէթ, եւ
12 բերցեն գոցա։ Եւ ասեն իշխանքն եւ
այլ մեծամեծքն", Դարձուսցուք անդրէն
եւ ի դոցանէ ոչ ինչ խնդրեսցուք, եւ
այդպէս արասցուք որպէս հրամայեսցես․
եւ կոչեցի զքահանայսն եւ երդմնեցու-
13 ցի զնոսա [3]վասն բանիս այսորիկ։ Եւ
զարկանելին իմ թօթափեցի ուժգին, եւ
ասեմ, Այսպէս թօթափեսցէ Աստուած
զամենայն այր որ ոչ կատարեսցէ զբանս
զայս՝ [4]ի կենաց իւրոց եւ ի տեղեաց իւ-
րոց". եղիցի այսպէս ունայնացեալ եւ
թօթափեալ [5]ի կենաց իւրոց"։ Եւ ասա-
ցին ամենայն ժողովուրդ եկեղեցւոյն
այնորիկ, Ամէն, եւ օրհնեցին զՏէր, եւ
արարին եւ կատարեցին ամենայն ժողո-
վուրդքն զբանս զայս։
14 Եւ յօրէն յայնմանէ յորմէ հետէ [6]պա-
տուիրեցի՝ զի մի լիցին նոցա իշխանք
Յուդայ", ի քսաներորդ ամէն մինչեւ յամն
երեսներորդ երկրորդ Արտաշխսի արքա-
յի՝ զերկոտասան ամ, ես եւ եղբարք իմ
[7]եղաք իշխանք․ բանի զուրուք մեք ոչ
15 կերաք եւ արբաք։ Եւ որք էին բռնա-
ցեալ զառաջինն՝ ծանրացուցին նոցա, եւ
առին ի նոցանէ զհաց եւ զգինի եւ զայլ
ամենայն, արծաթ զերդրաքմայս քառա-
սուն, եւ դարձուցին ի տեարս իւրեանց,
եւ ի բաց արարին զնոսա յիշխանութենէ
ժողովրդեանն", եւ ես ոչ եղէ իբրեւ
16 զնոսա վասն երկիւղին Աստուծոյ։ [8]Եւ
յաջողէր գործ պարսպին․ եւ ոչ զուրուք
բռնացայ ունել զսնդաստանս եւ կամ
զայգիս, եւ ամենեքեան էին անխափան
17 ի գործ պարսպին։ Ու արս հարեւր ի
Հրէիցն, եւ այլք որ գային ի հեթանո-
սաց առ մեզ որ շուրջ էին զմեւք՝ ես
18 ծախէի եւ խառնէի ի ճաշն իմ"։ Եւ լի-
նէր յաւուր միում զուարակ մի, եւ ոչ-
խարք վեց՝ ընտիրք, եւ [9]ամիկ մի․ այս
էր յաւուր ծախքն իմ"․ եւ ընդ մէջ տասն
աւուր անխնայ տայի զգինին ըմպել ա-
մենեցուն, եւ ոչ [10]յումեքէ առի զհաց
բռնի", քանզի գիտէի եթէ ծանր [11]է
19 գործ ժողովրդեանն։ Յիշեսցէ զիս Աս-
տուած" ի բարութիւն, որպէս արարի ա-
մենայն ժողովրդեանն։

Գլ. Զ

1 Եւ եղեւ յորժամ լուան Սանաբաղատ
եւ Տուբիա եւ [12]երկիրն Արաբացւոց եւ
այլք բազումք" ի թշնամեաց մերոց, ե-
թէ շինեցի զպարիսպն, եւ ոչ մնաց ի
նոսա [13]զօրութիւն․ (եւ ցայն ժամ եւս
2 զդրունսն ոչ էր կազմեալ․) Եւ առա-
քեաց Սանաբաղատ եւ Գեսամ առ իս,
եւ ասեն, Եկ եւ ժողովեսցուք ի միասին
ի գեղ մի ի դաշտին Ովնոյ․ եւ նոքա
3 կամէին խորհել չար ի վերայ իմ։ Եւ
առաքեցի առ նոսա հրեշտակս, եւ ա-
սեմ, Գործս զոր գործեմ ես՝ գործ մեծ
է, եւ ոչ ժամանեմ իջանել առ ձեզ,
[14]զի մի" խափանեսցի գործս, յորժամ
4 [15]կատարեմ զսա՝ ասլա" իջից առ ձեզ։ Եւ
առաքեցին առ իս [16]բազում անգամ", եւ
ես զնոյն պատասխանի արարի նոցա։

[1] Եբր. ո՞չ ապաքէն պարտ էր ձեզ շրջել երկիւղիւն Աստուծոյ մերոյ առ ի չլինելոյ ի նախատինս ազգաց թշնամեաց մերոց. (10) Եւ ես, եղբարք իմ եւ մանկունք իմ տուաք նոցա փոխ արծաթ եւ ցորեան․ աղէ թողցուք զայս բեռն. (11) Հապա դարձուցէք ի նոսա [2] Եբր. եւ զհարիւրորդ արծաթոյն եւ ցորենոյ, գինւոյն և ձիթոյ զոր խնդրէք ի նոցանէ։ (12) Եւ ասեն [3] Եբր. առնել ըստ [4] Եբր. ի տանէ իւրմէ եւ ի գործոյ իւրմէ [5] ՅԵբր. պ–յ–ւ [6] Եբր. պատուիրեաց ինձ լինել իշխան նոցա յերկրին Յուդայ [7] Եբր. զհաց իշխանութեան ոչ կերաք։ (15) Եւ իշխանքն առաջինք որ յառաջ քան զիս՝ ծանրանային ի վերայ ժողովրդեանն, եւ առնուին ի նոցանէ հաց եւ գինի, թող զարծաթոյ քառասուն սիկղս, նաեւ մանկունք նոցա բռնանային ի վերայ ժողովրդեանն

[8] Եբր. Նա և ի գործ պարսպին եղէ զօրաւիգն, և երդ ոչ գնեցաք, եւ ամենայն մանկունք իմ ժողովեալ էին անդր ի գործն։ (17) Եւ Հրեայք եւ ոստիկանք, արք հարեւր և յիսուն, և որ գային առ մեզ յազգաց որ շուրջ զմեւք՝ ի սեղանի իմում [9] Եբր. հաւք պատրաստէին ինձ [10] Եբր. պահանջեցի զհաց իշխանութեան, [11] Եբր. էր ծառայութիւն ժողովրդեանն։ (19) Յիշեա զիս, Աստուած իմ, [12] Եբր. Գեսամ Արաբացի եւ այլք [13] Եբր. խրամատ [14] Եբր. ընդէ՞ր [15] Եբր. թողից զայն և [16] Եբր. ըստ բանիս այսմիկ չորիցս

5 Եւ առաքեաց առ իս [1]Սանաբաղատ զպա-
տանի իւր, եւ ածէր ի ձեռին իւրում
6 թուղթ արձակ, Յորում գրեալ էր այս-
պէս. Յամենայն հեթանոսս լուր [2]եղեւ,
եթէ դու եւ [3]ամենայն Հրեայք կամիք
ապստամբել ի թագաւորէն. եւ վասն
այնորիկ շինես դու զպարիսպդ [3]եւ ամ-
բարցուցանես զաշտարակս զորս", վասն
7 զի կամիս դու թագաւորել. [4]Եւ վասն
այսորիկ" կացուցեր քեզ մարգարէս,
[5]զի կամիս նստել յԵրուսաղէմ եւ թա-
գաւորել ի վերայ Հրէաստանի". արդ
գուցէ պատմեսցեն զբանս զայս թագա-
ւորին. եկ եւ վասն այսր խորհեսցուք
8 երկոքեան: Եւ առաքեցի առ նա եւ ա-
սեմ, Ոչ ուստեք են բանքդ այդ զոր
դու խօսիս, այլ քեզէն ի սրտէ քումմէ
9 դու ասես զայդ: Զի ամենեքեան զար-
հուրեցուցանեն զմեզ եւ ասեն, Լքցին
ձեռք իւրեանց եւ մի՛ կատարեսցեն
զգործս իւրեանց. եւ արդ [6]զօրացուցի
զձեռս իմ մինչեւ կատարեցի զգործս ի
գլուխ":
10 Եւ ես մտի ի տուն Սեմայ որդւոյ
Դաղայեայ, որդւոյ Մետաբեղայ. եւ նա
լռեալ էր ի տան իւրում. եւ ասէ ցիս,
Ժողովեսցուք ի տուն [7]Տեառն, եւ ամ-
բարցուք ի մէջ դորա, եւ փակեսցուք
զդրունս դորա. զի [8]մի՛ գուցէ եկեալ
թշնամիքն գիշերի սպանանիցեն զմեզ":
11 Եւ ասեմ ես, [9]Ո՞վ է այն այր՝ յորմէ ես
փախեայց", եւ կամ ո՞ ոք իբրեւ զիս
այր որ մտցէ ի տուն Տեառն, եւ կա-
12 րասցէ [10]ապրել: Եւ գիտացի՝ եթէ ոչ էր
Աստուծոյ [11]առաքեալ, եւ ոչ էր բանն
13 մարգարէի վասն իմ: Եւ Տուբիաս եւ Սա-
նաբաղատ կալան վարձկանս, եւ ժողովս
բազումս վասն իմ, զի երկեայց եւ մտից
ի տուն Տեառն եւ" մեղայց. եւ գիցեն
14 ի վերայ իմ անուն [12]չար: Յիշեսցէ Ա-
ստուած ըստ նենգութեանն Տուբիայ եւ
Սանաբաղատայ՝ որք խորհեցան ի վերայ
իմ չար, եւ սախղէին սուտ մարգա-
րէանալ, զի զարհուրեցուսցեն եւ եր-
կեցուսցեն զիս":
15 Եւ կատարեցաւ պարիսպն ի քսանե-
րորդ հինգերորդ ամսոյն Եղուլ ի յիսուն
16 եւ երկու աւուրս: Եւ եղեւ յորժամ
լուան ամենայն թշնամիքն մեր, զար-
հուրեցան ամենայն հեթանոսքն որ շուրջ
զմեւք, եւ անկաւ ի վերայ նոցա ահ եւ
երկեւղ յոյժ, եւ գիտացին թէ յԱստու-
ծոյ էր կատարումն գործոյն մերոյ:
17 Եւ յաւուրսն յայնոսիկ [13]մեծաւ պա-
տուով առաքէր թուղթ ի Հրէիցն առ
Տուբիա, եւ ի Տուբիայ գայր առ նոսա.
18 Քանզի էր ընտանութիւն մեծ առ մի-
մեանս. զի էր" փեսայ Սեքենեայ որդ-
ւոյ Երայ, եւ Յոհանան որդի նորա ա-
ռար կին զդուստր Մեսողամայ որդւոյ
19 Բարաքեայ: Եւ [14]զբանս նորա էին որ
բերէին" առ իս, եւ զբանս իմ պատ-
մէին նմա. եւ թուղթս բազումս [15]տայր
առ ի յերկեցուցանել զիս:

## Գլ. Է

1 Եւ եղեւ յորժամ կատարեցաւ պա-
րիսպն, եւ կանգնեցի զդրունս նորա,
եւ կացին դռնապանք եւ երգեցիկք սաղ-
2 մոսասացք եւ Ղեւտացիք, Եւ պատուի-
րեցի [16]եղբարցն իմոց" եւ Անանեայ որ էր
իշխան ի վերայ Երուսաղեմի. վասն զի
նա էր ճշմարիտ այր եւ երկիւղած յԱս-
3 տուծոյ քան զբազումս, Եւ ասեմ ցնո-
սա, Մի՛ բանայցէք վաղվաղակի [17]զդրունսն
մինչեւ ի ծագել" արեւուն, եւ մինչդեռ
ամենեքեան արթունք իցեն՝ կալցեն
զդրունսն, եւ փակ արկեալ պնդեսցեն
զնոսա. եւ կացցեն պահապանք գրանից
ի բնակչաց Երուսաղեմի, այր ի պահու
իւրում, եւ այր իւրաքանչիւր [18]ի տան
իւրում":

---

[1] Եբր. Սանաբաղատ ըստ բանին այնմիկ հինգերորդ անգամ [2] Եբր. եղեւ, եւ Գեսամ ասէ, [3] Եբր. դ—յ—ե [4] Եբր. ըստ համբաւոյս: (7) Եւ [5] Եբր. քարոզել վասն քո յԵրուսաղէմ եւ ասել. Արքայ ի Հրէաստանի [6] Եբր. զօրացո զձեռս իմ [7] Եբր. Աստուծոյ [8] Եբր. գան սպանանել զքեզ, եւ գայցեն սպանանել զքեզ գիշերի [9] Եբր. Միթէ այր իբրեւ զիս փախիցէ՞ [10] Եբր. ապրել. ոչ մտից [11] Եբր. առաքեալ զնա. այլ խօսեցաւ նա մարգարէութիւն հակառակ ինձ, եւ Տուբիա եւ Սանաբաղատ կալան զնա ի վարձու: (13) Վասն այնորիկ կալան զնա ի վարձու, զի երկեայց, եւ արարեալ այնպէս՝ [12] Եբր. չար եւ նախատեսցեն զիս: (14) Ով Աստուած իմ, յիշեա զՏուբիա եւ զՍանաբաղատ ըստ գործոց նոցա, եւ զՆովադիա կին մարգարէ եւ զայլ եւս մարգարէս որ երկեցուցանեն զիս

[13] Եբր. յաճախեցին պատուականք Հրէից զթուղթս իւրեանց, որ երթային առ Տուբիա, եւ ի Տուբիայ գային առ նոսա. (18) Քանզի բազումք ի Հրէից երդուեալ էին նմա, զի էր նա [14] Եբր. զբարութենէ նորա խօսէին [15] Եբր. տայր Տուբիա [16] Եբր. եղբօր իմում Անանի [17] Եբր. զդրունսն Երուսաղեմի մինչեւ ի ջեռնուլ [18] Եբր. հանդէպ տան իւրոյ

4 Վասն զի քաղաքս մեծ եւ ընդարձակ
է եւ ժողովուրդս սակաւ ի սմա, եւ ոչ
եւս են դեռ ամենայն ապարանք շի-
5 նեալ։ Եւ արկ Աստուած ի սիրտ իմ,
եւ ժողովեցի զպատուականսն եւ զիշ-
խանսն եւ զժողովուրդն ի ժողով [1]մի.
եւ գտի զգիրսն ազգահամարին որ էին
ելեալ յառաջնումն ի գերութենէն. եւ էր
6 գրեալ ի նմա այսպէս. Այս են [2]անուանք
որդւոցն Իսրայելի՝ որք ելին ի գերու-
թենէն՝ զորս պանդխտեցոյց Նաբուքո-
դոնոսոր թագաւոր Բաբելացւոց, եւ
դարձան յԵրուսաղէմ եւ ի Հրէաստան,
7 այր իւրաքանչիւր ի քաղաք իւր. Որք
եկին ընդ Զորաբաբելի եւ ընդ Յեսուայ
եւ ընդ [3]Նէեմայ Ազարեանց՝. Ռայեղ-
միայ, Նայեմանի, Մարտեքու, [4]Բեղ-
ման, Մասափարաթ, Եզրա, Բա-
գուիէ, Նաւում, Բարանա, Մոփրա՝։
8 Արք ժողովրդեանն Իսրայելի. Որդիք
Փարոսայ՝ երկու հազար հարեւր եւթա-
9 նասուն եւ երկու, Որդիք Սափատեայ՝
երեք հարեւր եւթանասուն եւ երկու,
10 Որդիք Արեսայ՝ վեց հարեւր յիսուն եւ
11 [5]վեց, Որդիք Փաաթմովաբ յորդւոցն
Յեսուայ եւ Յովաբայ՝ երկու հազար [6]եր-
12 կերիւր ութեւտասն, Որդիք Եղամ՝ հա-
զար երկու հարեւր յիսուն եւ չորս,
13 Որդիք Զաթուայ՝ ութ հարեւր քառա-
14 սուն եւ հինգ, Որդիք Զաքու՝ եւթն
15 հարեւր վաթսուն, Որդիք Բանուայ՝ վեց
16 հարեւր քառասուն եւ ութ, Որդիք Բի-
17 բէի՝ վեց հարեւր [7]քառասուն եւ ութ, Որ-
դիք Ազգիայ՝ երկու հազար երեք հարեւր
18 քսան եւ երկու, Որդիք Ադոնիկամայ՝
19 վեց հարեւր [8]յիսուն եւ եւթն, Որդիք
Բագուէի՝ երկու հազար վաթսուն եւ
20 եւթն, Որդիք Ադինայ՝ վեց հարեւր յիսուն
21 եւ [9]չորս, Որդիք Ատերեզեկեայ՝ իննսուն
23 եւ ութ, [10]Որդիք Բէսաի՝ երեք հարեւր
24 քսան եւ չորս, Որդիք Արիփ՝ հարեւր
25 երկոտասան, Որդիք Գաբաւոնի՝ իննսուն
26 եւ հինգ, [11]Որդիք Բեթղեհէմ՝ հարեւր
քսան եւ երեք, որդիք Նետոփայ՝ յիսուն
27 եւ վեց՝, Որդիք Անաթովթ՝ հարեւր քսան
28 եւ ութ, Որդիք Բեթազմայ՝ քառասուն
29 եւ երկու, Որդիք Կարիաթարիմ Քաբիրայ
եւ Բերովթ՝ [12]ութ հարեւր քառասուն
30 եւ երեք, Որդիք Ռամայ եւ Գաբայ՝
31 վեց հարեւր քսան եւ մի, Որդիք Մա-
32 քեմաս՝ հարեւր քսան եւ երկու, Որ-
դիք Բեթէլ եւ Այի՝ հարեւր քսան եւ
33 երեք, [13]Որդիք Նաբիայ՝ հարեւր յիսուն
եւ երկու, որդիք Մակերոս՝ հարեւր յի-
34 սուն եւ վեց, Որդիք Եղամայ՝ հազար՝
35 յիսուն եւ չորս, Որդիք Երամ՝ երեք
36 հարեւր քսան, Որդիք Երիքով՝ երեք
37 հարեւր քառասուն եւ հինգ, Որդիք Լո-
դադիդ եւ Անովնի՝ եւթն հարեւր քսան
38 եւ [14]երեք, Որդիք Սենանայ՝ երեք հա-
զար [15]հարեւր երեսուն։
39 Քահանայք՝ որդիք Յեդայեայ տանն
Յեսուայ՝ ինն հարեւր եւթանասուն եւ
40 երեք, Որդիք Եմեր՝ հազար յիսուն եւ
41 երկու, Որդիք Փասէուր՝ հազար երկե-
42 րիւր քառասուն եւ եւթն, Որդիք Ե-
րամ՝ հազար եւթն եւ տասն։
43 Եւ Ղեւտացիք, որդիք Յեսուայ Կադմիէլ,
44 յորդւոցն Ուդայիդ, եւթանասուն եւ չորք։
45 Եւ երգեցիկք սաղմոսասացք, որդիք
Ասափայ՝ հարեւր քառասուն եւ ութ։
46 Եւ դռնապանք՝ որդիք Սեղումայ, որ-
դիք Ատեր, որդիք Տեմբոնի, որդիք
Ակուբ, որդիք Ատիտայ, որդիք Սա-
բէի, հարեւր երեսուն եւ ութ։
47 Եւ Նաթանիմացիք, որդիք Սիդայ,
որդիք Ասիփայ, որդիք Տաբովթ, որ-
դիք Սարիաս, որդիք Սիայ, որդիք Փա-
48 սոնի, Որդիք Լաբանու, որդիք Ագա-
բայ, [16]որդիք Ակուդ, որդիք Ուտայ,
որդիք Կետար, որդիք Ագար՝, որդիք
49 Սեղեմի, Որդիք Անան, որդիք Գադէլ,
50 որդիք Գայար, Որդիք Հռեայ, որդիք
51 Հռասոն, որդիք Նեկոդայ, Որդիք Գէե-
52 զամ, որդիք Ոզի, որդիք Փեսէ, Որ-
դիք Բեսէի, որդիք Մէինոս, որդիք Նե-
53 փուսիս, Որդիք Բաքուկ, որդիք Ա-
54 քիբայ, որդիք Արուր, Որդիք Բասա-
ղովթ, որդիք Միդայ, որդիք Արա-
55 սան, Որդիք Բարկոսէ, որդիք Սիսա-
56 րայ, որդիք Թեմայ, Որդիք Նեսիայ,
57 որդիք Սարիփայ։ Որդիք ծառայիցն Սո-
ղոմոնի, որդիք Սուտի, որդիք Սոփե-

[1]Եբր. մի, զի գրեցին յազգահամարի [2]Եբր. որդիք գաւառաց [3]Եբր. Նէեմայ, Ազարիայ [4]Եբր. Բաղսանայ, Մասփարաթայ, Բագուէի, Նաւումայ եւ Բաանայ [5]Եբր. երկու [6]Եբր. ութ հարեւր [7]Եբր. քսան [8]Եբր. վաթսուն [9]Եբր. հինգ [10]Եբր. (22) Որդիք Հասումայ երեք հարեւր քսան և ութ. (23) Որդիք [11]Եբր. Արք Բեթղեհեմայ եւ Նետոփայ հարեւր ութսուն և ութ

[12]Եբր. եւթն [13]Եբր. Արք միւս Նաբիայ՝ յիսուն եւ երկու, (34) Որդիք միւսոյ Եղամայ՝ հազար երկերիւր [14]Եբր. մի [15]Եբր. ինն հարեւր և [16]Եբր. [illegible]

58 րամ. որդիք Փորկոյայ, Որդիք Յէդայէ,
59 որդիք Դորկոնէ, որդիք Գադելայ, Որդիք
Սափատեայ, որդիք Եաէլ, որդիք Փա-
60 քարաթ Սաբայիմ, որդիք Հեմիմ։ Ա-
մենայն Նաթանայիմք եւ որդիք ծառա-
յից Սողոմոնի՝ երեք հարիւր իննսուն
եւ երկու։
61 Եւ սոքա էին որք ելին ի Թեղմելեթայ,
Թելարսայ, Քերուբ, Եդոն, Եմեր. եւ
ոչ կարացին պատմել զտուն հարց իւ-
րեանց, եւ ոչ զազգն իւրեանց որ յԻս-
62 րայէլէ իցեն։ Որդիք Դալայայ, [1]որդիք
Բուայ," որդիք Տուբիայ, որդիք
Նեկովդայ՝ վեց հարիւր քառասուն
63 եւ երկու։ Եւ ի քահանայիցն, որդիք
Եբիայ, որդիք Ակովս, որդիք Բերզե-
լեայ. վասն զի առ կին ի դստերաց Բեր-
զելեայ Գաղաադացւոյ, եւ կոչեցաւ ըստ
64 անուան նորա։ Սոքա խնդրեցին [2]գիրս
զազգահամարս" իւրեանց, եւ ոչ գտաւ.
65 եւ մերժեցան ի քահանայիցն։ Եւ ասաց
Աթարսաթա ցնոսա, Մի կերիցեն ի
սրբութենիցն սրբութեանց, մինչեւ յա-
րիցէ քահանայ [3]եւ լուսաւորեալ յայտ
նիցէ զնոսա"։
66 Եւ եղեւ ամենայն ժողով եկեղեց-
ւոյն չորք բեւրք եւ երկու հազար երեք
67 հարիւր վաթսուն. Թող զծառայս եւ
զաղախնայս իւրեանց՝ որք էին եւթն
հազար երեք հարիւր երեսուն եւ եւթն,
եւ որք էին երգեցիկք սաղմոսասացք
արք եւ կանայք՝ երկերիւր քառասուն
68 եւ հինգ։ Ձիք՝ եւթն հարիւր երեսուն
եւ վեց, ջորիք՝ երկերիւր քառասուն եւ
69 հինգ, Ուղտք՝ չորեքհարիւր երեսուն եւ
հինգ, էշք՝ վեց հազար [4]քսան եւ եւթն"։
70 Եւ իշխանք ըստ հայրապետացն իւ-
րեանց ետուն ի գործն. եւ Աթարսաթա
ետ ի գանձն՝ [5]ոսկի, սկուտեղս յի-
սուն, եւ պատմուճանս քահանայիցն
71 [6]երեսուն։ Եւ իշխանք հայրապետացն
ետուն ի գանձս գործոյն ոսկի երկու
բեւրս, եւ արծաթ [1]բեւր մնասս երկու
72 հազար երկերիւր։ Եւ այլ ժողովուրդն
ետ զանձկանս [7]երկուս բեւրս, եւ կան"
արծաթի երկու հազար. եւ պատմու-
ճանս քահանայիցն՝ վաթսուն եւ եւթն։
73 Եւ նստան քահանայքն եւ Ղեւտացիքն


[1]Յ։Բբ. զ—լ—ե [2]Ա։Բբ. զգիր ազգահամարի [3]Ա։Բբ.
յՈւրիմ եւ ի Թումիմ [4]Ա։Բբ. եւթն հարիւր քսան
[5]Ա։Բբ. զանձկանս ոսկիս հազար [6]Ա։Բբ. հինգ. հա
րիւր երեսուն [7]Եբբ. ոսկի երկուս բեւրս, եւ մնաս

եւ դռնապանքն եւ երգեցիկք սաղմո-
սասացքն, եւ ի ժողովրդենէն, եւ Նա-
թանիմայիքն, եւ ամենայն Իսրայէլ ի
քաղաքս իւրեանց։ Եւ ժամանեաց ե-
հաս ամիսն եւթներորդ, եւ էին որդիքն
Իսրայէլի ի քաղաքս իւրեանց։

ԳԼ. Ը

1 Եւ ժողովեցան ամենայն ժողովուրդն
իբրեւ այր մի ի հրապարակն առաջի
դրան Ջրոյն, եւ ասացին ցԵզրա դպիր
[1]օրինացն Տեառն", զի բերցէ զօրէնսն
Մովսիսի զոր հրամայեաց է Տէրն [1]Ա-
2 ստուծոյ Իսրայէլի։ Եւ եբեր Եզրա քա-
հանայ զօրէնսն առաջի եկեղեցւոյն, ուր
ժողովեալ էին արք եւ կանայք, եւ ա-
մենեքեան որք [8]կամէին լսել" յամսեանն
3 եւթներորդ առաջին։ Եւ սկսաւ կարդալ
ընդ [9]յառաւօտէ յորժամ ծագէր արեգակն"
մինչեւ ցօր հասարակ՝ առաջի արանց եւ
կանանց. եւ խնամածին ամենեքեան՝ եւ
ունէին ունկն ամենայն ժողովուրդն ի լսել
4 ամենայն գրեան օրինացն։ Եւ կայր Եզրա
[1]քահանայ եւ" դպիր ի վերայ բեմի [10]փայ-
տեղինի. եւ կային առ նմա Մատա-
թիաս եւ Սամեաս եւ Անանիաս եւ Ու-
րիաս եւ Քեղկիաս եւ Մաասիա՝ ընդ աջմէ
նորա. եւ ընդ ահեկէ նորա՝ Փադայիա
եւ Միսայէլ եւ Մեղքիաս եւ Ասում եւ
Սաբդանա եւ Զաքարիա եւ Մոսողամ։
5 Եւ յորժամ եբաց Եզրա զգիրսն առաջի
ամենայն ժողովրդեանն, վասն զի նա
էր [11]վերակացու ամենայն ժողովրդեանն",
եւ եղեւ ի բանալ նորա զգիրսն՝ [12]կայր
6 ժողովուրդն առաջի նորա"։ Եւ օրհնեաց
Եզրա զՏէր Աստուած մեծ. եւ ասեն
ամենայն ժողովուրդն, [13]Ամէն, եւ համ-
բարձին զձեռս իւրեանց, եւ խոնարհեալ
երկրպագեցին Տեառն Աստուծոյ ի վե-
7 րայ երեսաց իւրեանց յերկիր։ Եւ Յեսու
եւ Բանեա եւ [14]Սարաբիա էին որ խրա-
տ ուսուցանէին զօրէնսն ժողովրդեանն. եւ
ժողովուրդն կային ըստ կարգի [15]իւրեանց։

[8]Ա։Բբ. մարթէին լսել եւ իմաստանալ [9]Ա։Բբ. ի
հրապարակին որ առաջի դրան Ջրոյն յառա-
ւօտէ [10]Ա։Բբ. փայտեղինի զոր արարեալ էր վասն
այսորիկ [11]Ա։Բբ. ի վերայ բոլոր ամենայն ժողո-
վրդեանն [12]Ա։Բբ. յոտն եկաց ամենայն ժողովուրդն
[13]Ա։Բբ. Ամէն. ամէն [14]Ա։Բբ. Սարաբիա. Յամին. Ակ-
կուբ, Սաբեթա, Ոդիա, Մաասիա, Կալիտա,
Ազարիա, Յովզաբադ, Անան, Փաղայիա, եւ
Ղեւտացիք [15]Ա։Բբ. իւրեանց։ (8) Ընթերցան նոքա
ի գիրս օրինացն Աստուծոյ յայտնի, եւ ուսուցա-
նէին զմեկնութիւնն իմացուցին զոր ընթերցանն։

9 Եւ ասէ Նէեմի՝ որ է Աթարսաթա,
և Եզրա քահանայ և դպիր, և Ղեւ-
տացիքն որ իմացուցանէին ժողովրդ-
եանն. և ասեն ամենայն ժողովրդեանն,
Օրս այս՝ օր սուրբ է Տեառն Աստուծոյ
[1]մերոյ, մի՛ սգայք և մի՛ լայք. քանզի
լային ժողովուրդքն, յորժամ լսէին
10 զբանս օրինացն: Եւ ասէ ցնոսա, Եր-
թայք կերայք զպարարտս և արբէք
զքաղցունս, և առաքեցէք մասն որոց
ոչ գուցէ. վասն զի օր սուրբ է Տեառն
[2]Աստուծոյ մերոյ. արդ զօրացարուք և
11 մի՛ տրտմեցուցանէք զոք": Եւ Ղեւտա-
ցիքն լռեցուցանէին զժողովուրդն և
ասէին, Լուռ լերուք և մի՛ տրտմիք,
12 վասն զի օր սուրբ է սա: Եւ գնաց ժո-
ղովուրդն ուտել և ըմպել և առա-
քէին մասն [3]որոց ոչ գոյր". և առնէին
ուրախութիւն մեծ, վասն զի իմացան
զբանս [4]օրինացն զոր կարդաց նոցա":
13 Եւ յաւուրն երկրորդի ժողովեցան իշ-
խանքն հայրապետաց ամենայն ժողո-
վրդեանն՝ և քահանայք և Ղեւտացիք
առ Եզրաս դպիր օրինացն. զի տեղե-
կասցին և ուսցին ի նմանէ զամենայն
14 բանս օրինացն: Եւ գտին գրեալ յօրէնսն
զի էր հրամայեալ Տեառն Աստուծոյ
Մովսէսի, որպէս արժան է որդւոցն Իս-
րայէլի բնակել ի տաղաւարս ի տօնի
15 եւթներորդ ամսոյն, Եւ [5]որպէս նշա-
նակել փողով" յամենայն քաղաքս իւր-
եանց և յԵրուսաղէմ, և [6]ասէ Եզրա",
Ելէք ի լեառն և բերէք ոստս ձի-
թենեաց, և ոստս ի ծառոց սօսեաց,
և ոստս մրտոց խնկենեաց, և ոս-
տս արմաւենեաց, և ոստս ի թա-
ռոց ծառոց. և արարէք ձեզ տա-
16 ղաւարս ըստ գրեցելոյն: Եւ ելին ժո-
ղովուրդքն և բերին, և արարին իւր-
եանց տաղաւարս, այր ի տանիս իւրում,
և այր [7]ի սրահի իւրում և [7]ի սրահի տանն
Աստուծոյ, և [8]ի հրապարակս քաղաքին
17 մինչև ի դրունս" Եփրեմայ: Եւ արարին
տաղաւարս ամենայն ժողովք եկեղեց-
ւոյն որք դարձեալ էին ի գերութենէն,
և նստան ի տաղաւարս. քանզի ոչ
երբեք արարին որդիքն Իսրայէլի յա-

[1] Եբր. ձերոյ [2] Եբր. ձերոյ. մի՛ տրտմիք, զի՛ ուրախութիւն Տեառն է զօրութիւն ձեր [3] Եբր. պատրաստ [4] Եբր. զոր ետուն նոցա գիտել [5] Եբր. ազդ առնել և քարոզ կարդալ [6] Եբր. ասել [7] Եբր. ի գաւթի [8] Եբր. ի հրապարակի դրան Ջրոց և ի հրապարակի դրանն

ւուրցն Յեսուայ որդւոյ Նաւեայ այն-
պէս մինչև յօրն յայն. և եղև ուրա-
18 խութիւն մեծ յոյժ: Եւ կարդայր զգիրս
օրինացն օր ըստ օրէ, յօրէն յառաջնմէ
մինչև յօրն [9]եւթներորդ. և արարին
զտօնն զեւթն օր, և յաւուրն ութե-
րորդի եղև [10]կատարումն ըստ օրինացն

Գլ. Թ

1 Եւ ի քսան և չորս ամսոյն ժողովեցան
որդիքն Իսրայէլի և սկսան պահել պահս,
և զգեցան քուրձ և արկին մոխիր ի
2 վերայ գլխոց իւրեանց: Եւ որոշեցան
որդիքն Իսրայէլի յամենայն որդւոցն
այլազգեաց, և [11]քաւեցին զմեղս իւր-
3 եանց և զմեղս հարցն իւրեանց: Եւ
կային ի կարգի իւրեանց. և [12]կարդայր
Եզրա զգիրս օրինացն Տեառն Աստու-
ծոյ. և երկիր պագանէին ամենայն ժո-
ղովուրդքն" Տեառն Աստուծոյ իւրեանց:
4 Եւ կային ի բարձրաւանդակ տեղւոջ
[13]Եզրա և Ղեւտացիք և Յեսու Յով-
սեդեկեանց, և որդիքն Կադմիէլի, Սա-
քանիա որդի Սարեբիայ, որդիք Անանիայ"
և գոչեցին մեծաձայն առ Տէր Աստուած
5 իւրեանց: Եւ ասեն Ղեւտացիքն Յեսու
և [14]Կադմիէլ, Եղբարք, օրհնեցէք զՏէր
Աստուած մեր" յաւիտենից յաւիտենից,
և եղիցի օրհնեալ փառք Տեառն, և
բարձրասցի օրհնութիւն նորա [15]և զօ-
հութիւն: Եւ սկսաւ օրհնել Եզրա զՏէր
6 Աստուած և ասէ", Դու ես նոյն ինքն
Տէր [3]Աստուած միայն, դու արարեր
զերկինս և զերկինս երկնից և զամե-
նայն կարգս նոցա, և զերկիր և զամե-
նայն կարգս նորա, և զամենայն ինչ
որ է ի նմա, զծով և զամենայն որ է
ի նմա. և դու կենդանացուցեր զամե-
նեսեան. և քեզ երկրպագեն զօրք երկ-
նից, [16]և զքեզ փառաւորեն երկինք
7 երկնից. Վասն զի դու միայն ես Տէր
Աստուած մեր. դու" ընտրեցեր զԱբ-

[9] Եբր. վերջին [10] Եբր. տօն, և ժողով մեծ [11] Եբր. կացին և խոստովան եղեն [12] Եբր. ընթեռնուին ի գիրս օրինաց Տեառն Աստուծոյ իւրեանց զչորրորդ մասն աւուրն, և զչորրորդ մասն խոստովան լինէին և երկիր պագանէին [13] Եբր. Ղեւտացիքն, Յեսու, Բանի, Կադմիէլ, Սաբանիա, Բունի, Սարաբիա, Բանի, Քենանի [14] Եբր. Կադմիէլ, Բանի, Ասաբանիա, Սարաբիա, Ովդիա, Սաբանիա. Փեթայիա, Ելէք, օրհնեցէք զՏէր Աստուած ձեր [15] Եբր. անուն քո փառաւորեալ, և բարձրասցի քան զամենայն օրհնութիւն և գոհութիւն [16] Եբր. (7) Դու ես Տէր Աստուած որ

րամ, եւ հաներ զնա յերկրէն Քաղդեա-
ցւոց, եւ եդիր նմա անուն Աբրահամ.
8 Եւ գտեր զսիրտ նորա հաւատարիմ
առաջի քո. եւ եդիր ընդ նմա ուխտ
տալ [1]նմա զերկիրն Քանանացւոց եւ
Քետացւոց եւ Ամովրհացւոց եւ Փերե-
զացւոց եւ Յեբուսացւոց եւ Գերգե-
սացւոց [2]եւ զաւակի նորա մինչեւ յաւի-
տեան". եւ հաստատեցեր զբանս քո,
վասն զի արդար ես։
9 Եւ տեսեր զնեղութիւնս հարցն մերոց
որ յԵգիպտոս, եւ լուար աղաղակի նո-
10 ցա ի վերայ Կարմիր ծովուն. Եւ [3]արարեր
նոցա նշանս յԵգիպտոս եւ" ի Փարաւոն
եւ յամենայն ծառայս նորա, եւ յամե-
նայն ժողովուրդ երկրի նորա. քանզի
գիտացեր եթէ հպարտացան ի վերայ ժո-
ղովրդեան քո, եւ արարեր քեզ անուն
11 մեծ մինչեւ ցայս օր. Եւ զծովն Կարմիր
հերձեր առաջի նոցա, եւ անցին ընդ
մէջ ծովուն իբրեւ ընդ ցամաք. եւ
զհալածիչս նոցա ընկղմեցեր իբրեւ զվէմս
12 ի ջուրս բազումս։ Եւ սեամբ ամպոյ
առաջնորդեցեր նոցա ի տուէ, եւ սեամբ
հրոյ ի գիշերի, [4]վասն զի լուսաւորել"
զճանապարհս նոցա ընդ որ գնային։
13 Եւ ի լեառն Սինա իջեր եւ խօսեցար
ընդ նոսա յերկնից. եւ ետուր նոցա
զդատաստանս ուղիղս, եւ օրէնս ճշմա-
րիտս, հրամանս եւ պատուիրանս բարիս.
14 Եւ զշաբաթս քո սուրբս ծանուցեր նո-
ցա, եւ զպատուիրանս եւ զհրամանս
եւ զօրէնս ետուր նոցա ի ձեռն Մով-
15 սիսի ծառայի քո։ Եւ զհաց երկնից ետուր
նոցա ի կերակուր, եւ զջուր յվիմէ հանե-
ցեր ի վիմէ եւ արբուցեր նոցա. եւ [5]աս-
ցեր նոցա մտանել ժառանգել զերկիրն
յոր համբարձեր զձեռն քո տալ նոցա։
16 Եւ նոքանք եւ հարքն մեր հպար-
տացան եւ անօրինեցան, եւ խստացու-
ցին զպարանոցս իւրեանց, եւ ոչ լուան
17 պատուիրանաց քոց, Եւ անհնարեցին
յօրինաց քոց, եւ ոչ յիշեցին զսքանչե-
լիս քո զոր արարեր դու ընդ նոսա.
այլ խստացուցին զպարանոցս իւրեանց,
եւ [6]դարձուցին զթիկունս իւրեանց. եւ
կամեցան դառնալ ի ծառայութիւն անդ-
րէն յԵգիպտոս. այլ դու, Տէր" Աստ-
ուած մեր, գթած ես եւ ողորմած, եր-
կայնամիտ եւ բազումողորմ, եւ ոչ ի
18 սպառ մերժեցեր զնոսա։ Եւ դարձեալ
արարին իւրեանց որթ ձուլածոյ՝ եւ ա-
սացին, Այս են աստուածք որ հանին
զմեզ յերկրէն Եգիպտացւոց. եւ արարին
19 մեծամեծ բարկութիւնս. Եւ դու ըստ
բազում գթութեան եւ ողորմութեան
քում ոչ թողեր եւ ցուցեր զնոսա
յանապատին, եւ զսիւն ամպոյն ոչ հե-
ռացուցեր ի նոցանէ որ առաջնորդէր
նոցա ի տուէ, եւ զսիւն հրոյն որ լու-
սաւորէր զնոսա ի գիշերի՝ զճանապարհն
20 զոր երթային։ Եւ զհոգի քո սուրբ
զբարերար՝ ետուր նոցա [7]իմանալ զօ-
րէնսն" եւ զմանանայն ոչ հեռացուցեր
ի բերանոյ նոցա, եւ ետուր նոցա ջուր
21 [8]ի ծարաւոյ վիմէ"։ Եւ զքառասուն ամ
[9]շրջեցուցեր զնոսա յանապատին". հան-
դերձք նոցա ոչ մաշեցան, եւ [10]կօշիկք
22 նոցա ոչ հնացան։ Եւ հարեր առաջի նո-
ցա զթագաւորս եւ զժողովուրդս, եւ
բաժանեցին եւ կալան զերկիր նոցա ի
ժառանգութիւն, զերկիրն Սեհոնի" թա-
գաւորին Եսեբոնայ, եւ զերկիրն Ովգայ
23 թագաւորին Բասանու։ Եւ զորդիս նոցա
բազմացուցեր իբրեւ զաստեղս երկնից.
եւ ածեր զնոսա յերկիր զոր խոստացար
հարցն [11]նոցա, եւ ժառանգեցին զնա.
24 Վասն զի սատակեցեր առաջի նոցա
զբնակիչս երկրին Քանանացւոց, եւ ե-
տուր զերկիրն նոցա ի ձեռս նոցա. եւ
զթագաւորս նոցա եւ զժողովուրդ երկ-
րին արարեալ՝ որպէս եւ կամեցան"
25 ըստ կամաց իւրեանց։ Եւ առին զքա-
ղաքս [12]բարձրաբերձս եւ զպարարտս",
եւ ժառանգեցին զտունս լի ամենայն
բարութեամբ, ջրհորս փորեալս եւ կազմ-
եալս, այգիս եւ ձիթենիս եւ զամենայն
ծառս պտղաբերս ի կերակուրս յլու-

[1]Յոմանս. [illegible] [2]Ոմանք. զաւակի նորա [3]Ոմանք. ցուցեր նշանս եւ արուեստս [4]Ոմանք. լուսաւորել [5]Ոմանք. տացեր [6]Ոմանք. կոչեցին իւրեանց գլուխ դառնալ անդրէն ի ծառայութիւն իւրեանց ապստամբութեամբ իւրեանց. այլ դու,

[7]Ոմանք. խելամուտ առնել զնոսա [8]Ոմանք. ի ծարաւս իւրեանց [9]Ոմանք. կերակրեցեր զնոսա յանապատին, ոչինչ պակասեաց նոցա [10]Ոմանք. ոտք նոցա ոչ փապարեցան։ (22) Եւ ետուր նոցա թագաւորութիւնս եւ ժողովուրդս. եւ բաժանեցեր զնոսա ի փնճակս, եւ ժառանգեցին զերկիրն Սեհոնի, զերկիրն [11]Ոմանք. նոցա մտանել ժառանգել։ (24) Եւ եկին որդիքն եւ ժառանգեցին զերկիրն, եւ նուաճեցեր առաջի երեսաց նոցա զբնակիչս երկրին Քանանացւոց, եւ ետուր զնոսա ի ձեռս նոցա, եւ զթագաւորս նոցա եւ զժողովուրդս երկրին առնել ի նոսա [12]Ոմանք. ամուրս եւ երկիր պարարտ

թեան նոցա. կերան եւ յագեցան, գի-
րացան եւ փափկացան ի բարութիւնս
մեծամեծս զոր ետուր նոցա։
26 Եւ հեռացան եւ մերժեցան ի քէն, եւ
յետս դարձան յօրինաց քոց. եւ զմար-
գարէսն քո կոտորեցին, որ քարոզեցին
նոցա դառնալ առ քեզ. եւ արարին
27 զբարկութիւն մեծ առաջի քո։ Եւ ետուր
զնոսա ի ձեռս նեղչաց նոցա, եւ նեղե-
ցին զնոսա. եւ աղաղակեցին առ քեզ
ի ժամանակս նեղութեան իւրեանց, եւ
դու յերկնից լուար նոցա. եւ բազում
գթութեամբ եւ ողորմութեամբ փրկե-
ցեր զնոսա, եւ հաներ զնոսա ի ձեռաց
28 նեղչաց նոցա։ Եւ յորժամ հանգեան,
դարձան եւ արարին զչարիս առաջի քո.
եւ թողեր զնոսա ի ձեռս թշնամեաց
նոցա, եւ չարչարեցին զնոսա. եւ դարձ-
եալ աղաղակեցին առ քեզ, եւ դու յերկ-
նից լուար նոցա, եւ փրկեցեր զնոսա
29 բազում [1]ողորմութեամբ քով՝։ Եւ դարձ-
եալ եդիր վկայութիւն առ նոսա՝ դառ-
նալ յօրէնս քո. բայց նոքա ամբարտաւանեալք
յիմարութեամբ ոչ լուան օրինաց քոց,
եւ ի հրամանս քո եւ ի պատուիրանս
քո մեղան, [2]զոր դու ասացեր եւ հրա-
մայեցեր, զի ո ոք արասցէ ի մարդ-
կանէ զբան պատուիրանաց քոց կեցցէ՝
նոքիմբք. բայց նոքա դարձուցին զթի-
կունս իւրեանց, եւ եղեն խստապա-
30 րանոցք եւ ոչ լուան բանի քում. Եւ
դու երկայնամտեցեր առ նոսա [3]եւ ա-
ռաքեցեր ի վկայութիւն զմարգարէսն
Հոգւով քո սրբով՝. սակայն եւ այնպէս
ոչ լուան. եւ մատնեցեր զնոսա ի ձեռս
ժողովրդոց օտարաց երկրին, [4]որք տա-
31 ռապեցուցին զնոսա յոյժ՝։ Եւ դու ըստ
բազում գթութեան եւ ողորմութեան
քում ոչ թողեր զնոսա մինչեւ ի սպառ,
եւ ոչ մերժեալ հեռացուցեր զնոսա ի
քէն. զի [5]դու հզօր ես գթած եւ ողոր-
մած, երկայնամիտ եւ բազումողորմ։

32 Եւ այժմ, Տէր Աստուած մեր՝ զօրա-
ւոր եւ մեծ, ամենակալ եւ ահարկու,
արդար եւ ճշմարիտ, պահեա զուխտ եւ
զողորմութիւն, եւ հայեաց ի տառապանս
մեր եւ ի նեղութիւնս, եւ թագաւո-
րացն մերոց եւ իշխանացն մերոց, եւ
քահանայից եւ մարգարէիցն մերոց, եւ
ամենայն հարցն մերոց, եւ ժողովրդեան
քո զոր տառապեցուցին, եւ բռնացան
ի վերայ մեր թագաւորք Ասորեստան-
33 եայց մինչեւ ցայսօր։ Եւ դու արդար
ես յամենայնի զոր ածեր ի վերայ մեր
վասն մեղաց մերոց. վասն զի ճշմար-
34 տութեամբ արարեր. Բանզի մեղաք
մեք եւ թագաւորք մեր եւ իշխանք եւ
քահանայք եւ հարքն մեր, եւ ոչ արա-
րաք զպատուիրանս քո, եւ ոչ հայե-
ցաք յօրէնս քո եւ ի վկայութիւնս զոր
35 եդիր առ մեզ. Եւ զգթութիւնս քո եւ
զբազում բարութիւնս՝ զոր ետուր մեզ
եւ զերկիրս յայսմիկ ի լայնս եւ յընդար-
ձակ եւ ի պարարտ զոր ետուր մեզ,
ոչ զիտացաք՝ ծառայել քեզ. այլ դար-
ձուցաք զմիտս մեր յօրինաց քոց, եւ
մատնեցաք մեք ի գերութիւն վասն մե-
36 ղաց մերոց՝։ Եւ ահաւասիկ եմք այսօր
ի ծառայութիւն, եւ երկիրս զոր ետուր
հարցն մերոց ուտել զպտուղ եւ զբա-
37 րութիւն [6]սորա ապատութեամբ։ Արդ
այսօր թագաւորք օտարք տիրեն ի վերայ
մեր եւ ուտեն զսա վասն մեղաց մե-
րոց, եւ անկեալք ի ծառայութիւն՝
տամք հարկս. եւ վարեն զմեզ եւ զա-
նասունս մեր որպէս եւ կամին, եւ եմք
ի նեղութեան եւ ի վիշտս մեծ այսօր
38 վասն մեղաց մերոց՝։ Եւ արդ ի վերայ
այսր ամենայնի՝ մեք դնեմք ուխտ

---

[1]Եբր. անգամ [2]Եբր. զորս արասցէ մարդ եւ կեցցէ [3]Եբր. զամս բազումս եւ եդիր վկայութիւն ի նոսա Հոգւով քով ի ձեռն մարգարէից քոց [4]Եբր. պակասէ [5]Եբր. Աստուած գթած եւ ողորմած ես դու։ (32) Եւ արդ, Աստուած մեր, Աստուած մեծ, հզօր եւ ահաւոր, որ պահես զուխտ և զողորմութիւն, մի՛ թուեսցին դոյզն առաջի քո ամենայն տառապանք որ գտին զմեզ, զթագաւորս մեր, զիշխանս մեր, եւ զքահանայս մեր եւ զմարգարէս մեր, եւ զհարս մեր, եւ զամենայն ժողովուրդ քո յաւուրց անտի թագաւորաց Ասորեստանեայց մին-
չեւ ցայս օր։ (33) Եւ դու արդար ես վասն ամենայնի որ եկն ի վերայ մեր, զի ճշմարտութեամբ արարեր, եւ մեք ամբարշտութեամբ գործեցաք։ (34) Եւ թագաւորք մեր, իշխանք մեր, քահանայք մեր, եւ հարքն մեր ոչ արարին զօրէնս քո, եւ ոչ անսացին հրամանաց քոց եւ վկայութեանց քոց զորս վկայեցեր ի նոսա։ (35) Եւ նոքա ի թագաւորութեան իւրեանց եւ ի բազում բարութեան քում զոր ետուր նոցա, եւ յերկրին յանդորր եւ ի պարարտ զոր ետուր նոցա՝ ոչ ծառայեցին քեզ, եւ ոչ դարձան ի գործոց իւրեանց չարաց։
[6]Եբր. սորա՝ ահա ծառայ եմք մեք անդէն։ (37) Եւ երկիրս մատուցանէ արդասիս բազումս թագաւորաց զորս եդիր ի վերայ մեր վասն մեղաց մերոց, եւ տիրեն ի մարմինս մեր և յանասունս մեր որպէս եւ կամին, եւ մեք եմք ի նեղութեան մեծի

[1]եւ հաւատարմութիւնս, եւ հաւատամք
յօրէնս քո եւ առնեմք զնուխտ, եւ որ ինչ
գրեալ է ի նմա." եւ գրեմս զայս գրով
հաստատեմք եւ կնքեմք՝ [1]ամենայն իշ-
խանք մեր եւ Ղեւտացիք մեր եւ քա-
հանայք մեր։

## Գլ. Ժ

1 Եւ այս են որ կնքեն [2]զգիրս զայս հա-
ւատարմութեան առ քեզ. Նէեմիա որդի
Աքաղեայ, եւ Սեդեկիա որդի Սարեայ",
2 Եւ Ազարիա եւ Երեմիա (3) Եւ Փասուր,
4 Ամարիա, Մեղքիա, Ատտուս, Սաբանիա,
5 Մաղուք, Եմաթ, Մերամոլթ, Աբդիա,
6 Դանիէլ, Կանաթոն, Բարուք, (7) Մեսու-
8 ղամ, Աբիա, Միամին, Մաազիա, Բեղգէէ,
Սեմէի. այսք ամենեքեան են քահանայք։
9 Եւ Ղեւտացիք՝ Յեսու որդի Ազանեայ,
Բանիա յորդւոց Ենադադայ, Գադմիէլ,
10 Եւ եղբարք նոցա, Սեբանիա, Ովդիա,
11 Կաղիտան, Փեղի, Անան, Միքա, Հաով-
12 բա, Սերի, Զաքուր, Սարաբիա, Սե-
13 բանիա, Ովդիա, [3]որդիք Բանունեայ"։
14 Իշխանք ժողովրդեանն, Փորս, Փաղադ-
15 մովաբ, Եղամ, [4]Զաթուբա, Որդիք
16 Բանեայ" Ազգաթ, Բեբայի, Ադոնիա,
17 Բագու, Եդին, Ատեր, Եզեկիա,
18 Ազուր, Ովդիա, Ասամ, Բեսէի, (19)Արիփ,
20 Անաթոթ, Նովբա, Մոթափէս, Մե-
21 սուղամ, Եզր, Մասիզաբէէլ, Զադուկ,
22 Եդովք, Փաղիտա, Անան, Անիա,
23 Աւէէ, [5]Անանիաս, Հասուբ", Էաբա-
26 նան, Մաասիա, Այիա, Էնան, Աւնան,
27 Մաղուք, [6]Հաէում։
28 Եւ այլ եւս մնացորդք ժողովրդեանն,
քահանայք եւ Ղեւտացիք, դռնապանք,
երգեցիկք, Նաթանացիք. եւ [7]ամենե-
քեան ժողովուրդքս որք լսեմք զօրէնս
Տեառն Աստուծոյ մերոյ, գնեմք վկայ-
ութիւն այսօր առաջի քո՝ արք եւ կա-
29 նայք, որդիք եւ դստերք իւրեանց։ Եւ
որ մեռանգամ անցցէ զօրէնօք քովք,
երդմամբ հաստատեմք այսօր առաջի
քո, եղիցի նա ի նզովս եւ յանէծս, որ
ոչ պահեսցէ զօրէնս քո որ տուաւ ի
ձեռն Մովսիսի ծառայի քո. այլ ամե-
նայն կամօք մերովք պահեսցուք, եւ
արասցուք" զամենայն պատուիրանս
Տեառն Աստուծոյ եւ զդատաստանս նորա
30 եւ զհրամանս։ Եւ մի՛ տացուք զդստերս
մեր ուստերաց ժողովրդոց օտարաց, եւ
զդստերս հեթանոսաց ոչ առցուք որդ-
31 ւոց մերոց։ Եւ ժողովուրդք երկրիս այ-
սորիկ որ բերիցեն առ մեզ վաճառս յա-
ւուր շաբաթու, ոչ գնեսցուք ի նոցա-
նէն [8]ի շաբաթուն. զի օր սուրբ է, եւ
սուրբ պահեսցուք զօրն եւթներորդ։
32 Եւ տացուք զողորմութիւնս երրորդ"
զդիդրաքմայի ամ ըստ ամէ ի հարկ տանն
33 Աստուծոյ, [9]Եւ զհաց առաջելից եւ
զզոհս ըստ ժամանակս ժամանակս, եւ
զողջակէզս" յամենայն աւուրս եւ ի տա-
րեկանս եւ ի շաբաթս եւ յամսամուտս եւ
ի նաւակատիս եւ ի սրբութիւնս, եւ վասն
մեղաց՝ որ են ի քաւութիւնս Իսրայելի
եւ ի գործս տաճարին Տեառն Աստուծոյ
34 մերոյ։ Եւ [10]վիճակս արկցուք վասն
ժառանգութեան փայտիցն, որ երթայ
քահանայիցն եւ Ղեւտացւոցն, եւ ժո-
ղովուրդն բերցէ ի տուն Աստուծոյ մե-
րոյ, ի տունս" հայրցն մերոց ըստ ժամա-
նակս ժամանակս ամ ըստ ամէ, զոր
արժան է այրել ի վերայ սեղանոյ զո-
հից Տեառն Աստուծոյ մերոյ, որպէս եւ
35 գրեալ է յօրէնսն [1]Մովսիսի։ Եւ տացուք
զպտուղս զառաջաւորութեանց երկրի
մերոյ, եւ զպտուղս ծառոց մերոց ամ
ըստ ամէ ի տուն Տեառն Աստուծոյ
36 մերոյ։ Եւ [11]զդիդրաքմայս անդրանկաց"
որդւոց մերոց, եւ զանդրանիկս անասնոց
մերոց՝ որպէս եւ գրեալ է յօրէնսն [1]Մով-
սիսի՝ եւ զանդրանիկս արջառոց մերոց
եւ հօտից բերցուք ի տուն Աստուծոյ
մերոյ, քահանայից մերոց Ղեւտացւոց

---

[1]Եբր. զուխտ [2]Եբր. Նէեմիա Աթարսաթան, որդի Աքաղեայ, եւ Սեդեկիա, Սարայիա [3]Կամ, Բանի, Բանինու [4]Եբր. Զաթու, Բանի, (15) Բունի [5]Եբր. Անանիա, Ասուբ, (24) Ալոէս, Պիղա, Սորեկ, (25) Հաէում [6]Եբր. Հարիմ, Բաանա

[7]Եբր. ամենայն զատուցեալք ի ժողովրդոց դառնալ յօրէնս Աստուծոյ, կանայք նոցա, ուստերք նոցա եւ դստերք նոցա, ամենեքին որ կարող էին իմանալ. (29) Յարեալ յեղբարս իւրեանց յիշխանս, մտեալ ընդ նզովիւք եւ ընդ երդմամբ գնալ յօրէնս Աստուծոյ որ տուան ի ձեռն Մովսիսի ծառայի Աստուծոյ, եւ պահել եւ առնել

[8]Եբր. ի շաբաթուն եւ յաւուր սրբութեան. եւ թողցուք զամն եւթներորդ եւ զպահանջմունս ամենայն պարտուց։ (32) Եւ եդաք ի վերայ մեր կանոն տալ զերրորդ [9]Եբր. Ի հաց առաջելից եւ ի զոհ մշտնջենաւոր և յողջակէզ մշտնջենաւոր [10]Եբր. արկաք վիճակս քահանայից եւ Ղեւտացւոց եւ ժողովրդեանն վասն ընծայի փայտիցն, բերել ի տուն Աստուծոյ մերոյ ըստ տանց [11]Եբր. զանդրանիկս

37 որք կան ի սպասու տան ¹Տեառն. Եւ
զառաջաւորս ²ցորենոյ եւ" զպտուղս
ծառոց՝ գինւոյ եւ ձիթոյ բերցուք առ
քահանայսն ի տուն գանձանակին Աս-
տուծոյ. եւ զտասանորդս երկրիս մե-
րոյ ³Ղեւտացիքն շրջեսցին եւ առցեն
38 զամենայն բովանդակ։ Եւ եղիցի քա-
հանայ որդի Ահարոնի՝ որ տասանոր-
դեսցէ զՂեւտացիսն, եւ Ղեւտացիքն
ի տասանորդաց մերոց տասանորդեսցեն
քահանային մեծի" ի տուն Աստուծոյ մե-
րոյ, ի տուն գանձանակին որ կան ի տաճա-
39 րին Տեառն. Վասն զի ⁴կացցէ ի գանձել
ի համբարս որդւոց Ղեւտացւոց եւ
սպասաւորաց՝ ի տեղիսն ուր կան սրբու-
թեանցն. եւ եղիցի քահանայիցն եւ
Ղեւտացւոց եւ դռնապանաց եւ երգեց-
կաց սաղմոսաց. եւ մի պակասեսցին
նոցա ռոճիկք երբեք ի տանէ Աստուծոյ
մերոյ, եւ մի նոքա զսպաս Տեառն խա-
փանեսցեն։"

ԳԼ. ԺԱ

1 Եւ նստան իշխանք ժողովրդեան յԵրու-
սաղէմ, ⁵եւ արկին վիճակս, զի մին ի
տասանց արուս եւ ելցէ վիճակին՝ նստցի
յԵրուսաղէմ քաղաք սրբութեան, եւ
⁶ինն երորդքն մնասցեն յիւրաքանչիւր
2 քաղաքս։ Եւ օրհնեաց ժողովուրդն զարսն
զայնս որ որոշեցան եւ նստան յԵրուսա-
3 ղէմ։ Եւ այս են իշխանք երկրին որ նստան
⁷յԵրուսաղէմ, եւ" քահանայք եւ Ղեւտա-
ցիք եւ Նաթանայիք, եւ որդիք ծառայիցն
4 Սողոմոնի։ Եւ որք նստան յԵրուսաղէմ,
էին յորդւոցն Յուդայ եւ Բենիամինի։
Եւ այս են յորդւոցն Յուդայ. Աթեէ
որդի Ոզիայ, որդի Զաքարեայ, որդի
Ամարեայ, որդի Սափատեայ, որդի Մա-
5 ղէեղայ յորդւոցն Փարեսայ, Եւ Մա-
ասիա, որդի Բարուք, որդի Աղաղայ,
որդի Ոզիայ, որդի Ադիայ, որդի Յովա-
րիբ, որդի Զաքարեայ, որդի Սեղոնեի
6 Ամենայն որդիք Փարեսի որ նստան յԵ-
րուսաղէմ, չորեքհարիւր վաթսուն եւ
ութ՝ արք զօրաւորք։
7 Եւ այս են որդիք Բենիամինի. Սեղոմ
որդի Մեսողամ, որդի Յովադ, որդի
Փադայի, որդի Կոլիայ, որդի Մաա-
8 սիա, որդի Աթիէլ, որդի Եսայեայ։ Եւ
զհետ նորա Գեբէի, Սեղէի, ինն հա-
9 րիւր ⁸քսան եւ ութ։ Եւ Յովէլ որդի
Զեքրի՝ այցելու եւ վերակացու ի վերայ
նոցա. եւ Յուդա որդի Սանայ՝ որ էր
երկրորդ ի քաղաքին։
10 Եւ ի քահանայիցն, Ցեդայիա որդի
11 Յովարիբ, Յաքին, Սարիա, որդի Եղ-
քեայ, որդի Մեսուղամ, որդի Սադովկ,
որդի Մարաւովթ, որդի ⁹Եաովբ. եւ
էին առնք իւրեանց մօտ ի տաճարին
12 Տեառն". Եւ եղբարք նոցա որ գործէին
զգործ սպասաւորութեան տանն Տեառն՝
ութ հարիւր քսան եւ երկու. եւ Ադայի
որդի Երովամ, որդւոյ Փաղալիայ, որդւոյ
Ամասեայ, որդի Զաքարեայ, որդի Փա-
13 սեուր, որդի Մեղքիայ։ Եւ եղբարք
նորա իշխանք հայրապետացն, երկերիւր
քառասուն եւ երկու. եւ Ամասայի որ-
14 դի ¹⁰Եզրիէլ, Եւ եղբարք նոցա զօրա-
ւորք հարիւր քսան եւ ութ. եւ այցե-
լու եւ վերակացու նոցա Զեքրիէլ՝ որ
էր ի մեծաց իշխանաց։
15 Եւ յՂեւտացւոցն Սամէիա որդի Ասուբ,
17 որդի ¹¹Եզրամ։ Եւ Մաթանայիք, որդի

¹ Եբր. Աստուծոյ մերոյ ² Եբր. զանդրուածոյ մերոյ եւ զընծայս, ³ Եբր. առ Ղեւտացիսն. նոքա Ղեւտացիքն յամենայն քաղաքս մշակութեան մերոյ առնուն զտասանորդսն. (38) Եւ քահանայն որդի Ահարոնի եղիցի ընդ Ղեւտացիսն յորժամ Ղեւտացիքն առնուն զտասանորդսն, եւ Ղեւտացիքն բերցեն զտասանորդ տասանորդացն ⁴ Եբր. որդիքն Իսրայէլի եւ որդիքն Ղեւեայ զնուէրս ցորենոյ եւ գինւոյ եւ ձիթոյ տարցին ի սենեակս ուր կան կահք սրբութեանցն եւ քահանայքն պաշտօնեայք եւ դռնապանք եւ երգեցիկք. եւ մի անփոյթ արասցուք զտուն Աստուծոյ մերոյ։

⁵ Եբր. եւ մնացեալ ժողովուրդն ⁶ Եբր. ինունքն ⁷ Եբր. յԵրուսաղէմ. այլ ի քաղաքսն Յուդայ բնակեցան. այր ի ժառանգութեան իւրում ի քաղաքս իւրեանց Իսրայէլ,

⁸ Եբր. քսան ⁹ Եբր. Աքիտովբ, վերակացու տանն Աստուծոյ ¹⁰ Եբր. Ազարիէլի, որդւոյ Ահզայ, որդւոյ Մեսեղամովթայ, որդւոյ Եմմերայ ¹¹ Եբր. Եզրիկամ, որդի Ասաբիա, որդի Բուննի։ (16) Նա եւ Սաբեթա եւ Յովզաբադ որ էին յիշխանացն Ղեւտացւոց, էին ի վերայ արտաքին գործոց տանն Աստուծոյ։ (17) Եւ Մաթանիա որդի Միքայ, որդւոյ Զաբդեայ, որդւոյ Ասափայ, որ էր գլխաւոր ի սկսանել խոստովան լինել յաղօթս, եւ յեղբարց նորա Բակբուկա էր երկրորդ, եւ Աբդա որդի Սամուայ, որդւոյ Գաղաղայ, որդւոյ Իդիթունի։ (18) Ամենայն Ղեւտացիք ի քաղաքին սրբութեան երկերիւր ութսուն եւ չորք։

(19) Եւ դռնապանք Ակուբ, Տեղմոն եւ եղբարք նոցա, պահապանք ի դրունս՝ հարիւր եօթանասուն եւ երկու։

(20) Եւ մնացորդն Իսրայէլի, քահանայք, Ղեւտացիք յամենայն քաղաքս Յուդայ այր իւրաքանչիւր ի ժառանգութեան իւրում։ (21) Եւ Նաթանայիմքն բնակէին յՈփաղ, եւ Սիքա եւ Գիսփա՝ ի վերայ Նաթանայիմեանց։

Միքայ եւ Յարեբ, որդիք Սամուէ՛ եր-
19 կերիւր եւթանասուն եւ չորս։ Եւ դռնա-
պանք, Ակուբ, Տեղամին եւ եղբարք
նոցա՝ հարեւր եւթանասուն եւ երկու՛՛։
22 Եւ այցելու եւ վերակացու Ղեւտացւոցն
յԵրուսաղէմ, Ոզա որդի Բանի, որդի
Ասաբեայ, որդի Մաթանիա, որդի Մի-
քայ, յորդւոցն Ասափայ որ էին երգե-
23 ցիկք մօտ առ տուն Տեառն. Վասն զի
հրաման թագաւորին էր առ նոսա լի-
նել անդ, եւ անխափան ունել զպաշ-
24 տօնն։ Եւ Փաթաա որդի Մեսեզա-
բեղայ, [1]Զարեհ որդի Յուդայ, որ ի
ձեռանէ թագաւորին ունէր զամենայն
կազմած, եւ բնակէր յագարակն իւրեան։
25 Եւ յորդւոցն Յուդայ որք նստան ի
Կարիաթարբա, եւ Յեսու եւ Բերսաբէէ.
30 եւ բնակութիւն նոցա Ղաքիս. Եւ ագա-
րակք իւրեանց, որք եւ ունէին զԲեր-
31 սաբէէ։ Եւ որդիք Բենիամենի ի Գաբա՝
36 Մաքմաս. Եւ Ղեւտացւոցն բաժին Յուդա
եւ Բենիամենի՛՛։

ԳԼ. ԺԲ

1 Եւ այս են քահանայք եւ Ղեւտացիք
որ ելին ընդ Զօրաբաբելի Սաղաթիելեա-
նեայ եւ Յեսուայ [2]Յովսեդեկեանց. Սա-
րայիա, Երեմիա, Եզրա եւ Ամարիա,
2 Մաղուք, Ատտուս, [3]Սեքենիա։ Այս՛՛ են
իշխանք քահանայից եւ եղբարք նոցա
յաւուրս Յեսուայ։

8 Եւ Ղեւտացիք՝ Յեսու, Բանուի, Կադ-
միէլ, Սարաբիա, Յուդա, Մաթանիա,
[4]եւ եղբարք նոցա որ էին կարգեալ օր
9 ըստ օրէ. եւ Յովակիմայ Եղիասիբ, Եւ
Եղիասիբայ Յովադէ, եւ Յովդայեայ
Յովնաթան, եւ Յովնաթանայ Յադդուա
Եւ յաւուրս Յովակիմայ եղբարք նոցա
էին իշխանք եւ քահանայք հայրապետ-
ացն. Սարիա, Եմարիա, Երեմիա, Անա-
նիա, Ազարիա, Եզրա, Մեսուղամ, Ա-
մարիա, Յովնան, Մաղուք՛՛։
22 Եւ Ղեւտացիք յաւուրս Եղիասիբ, Յով-
դա եւ Յովա եւ Յովնան եւ Իդուա՝ գրեալք
իշխանք հայրապետացն. եւ [2]այս ամե-
նայն՛՛ քահանայք էին ի թագաւորու-
23 թեանն [5]Դարեհի։ Որդիք Ղեւեայ իշ-
խանք հայրապետացն գրեալք ի գիրս
բանից աւուրց համարոյն, մինչեւ ցՅովնան
24 որդի Եղիասիբ։ Եւ իշխանք Ղեւտաց-
ւոց՝ Ասաբիա եւ Սարաբիա եւ [6]Յեսու.
եւ որդիք Կադմիէլ, եւ եղբարք նոցա
մօտ առ նմա՛՛, օրհնել եւ սաղմոս ասել.
որպէս եւ հրամայեաց Դաւիթ այրն Աս-
25 տուծոյ, [7]Օր ըստ օրէ զօրհնաբանել ի
ժողովս իւրեանց համբերձ դռնապանօք՛՛։
26 Սոքա էին յաւուրս Յովակիմայ որդւոյ
Յեսուայ, որդւոյ Յովսեդեկեայ, եւ
յաւուրս [8]Նէեմայ եւ Եզրայ քահանայի
եւ դպրի օրինացն Տեառն՛՛։
27 Եւ ի նաւակատիս պարսպին Երու-

---

[1] Եբր. յորդւոցն Զարեհի որդւոյ Յուդայ՝ ընդ ձեռամբ թագաւորին յամենայն գործս ժողովրդեանն։

(25) Եւ յորդւոցն Յուդայ բնակեցան ի գեղս եւ յագարակս նոցա, ի Կարիաթարբա եւ յաւանս նորա, ի Դեբոն եւ յաւանս նորա, եւ ի Կաբսէէլ եւ ի գեղս նորա, (26) Եւ ի Յեսուա եւ ի Մողադա եւ ի Բեթփաղեղ, (27) Եւ ՅԱսեր-սուաղ եւ ի Բերսաբէէ եւ յաւանս նորա, (28) Եւ ի Սիկեղակ եւ ի Մեքոնա եւ յաւանս նորա, (29) Եւ յԵնռեմոն, ի Սարաա, ի Յերիմութ, (30) Ի Զանով, յՈդողամ և ի գեղս նոցա, ի Ղաքիս և յագարակս նորա, յԱզէկա և յաւանս նորա. այսպէս բնակեցան նոքա ի Բերսաբէէ մինչեւ ի Ձորն Ենոմայ։

(31) Եւ որդիքն Բենիամինի՝ ի Գաբայ ի Մաքմաս, Այիա, Բեթէլ եւ յաւանս նորա, (32) Անաթովթ, Նոբ, Անանիա, (33) Հասովր, Ռամա, Գեթթայիմ, (34) Հադիդ, Սեբոյիմ, Նեբաղադ, (35) Ղոդ, Օնով, Գեքարասիմ։

(36) Եւ ի Ղեւտացւոցն բաժինք Յուդայ ի Բենիամին։

[2] Եբր. պակաս [3] Եբր. (3) Սեքենիա, Հռէում, Մերամովթ, (4) Աղդով, Կանաթոն, Աբիա, (5) Միամին, Մովադիա, Բեղգա, (6) Սեմայիա, Յովարիբ, Յեդայիա, (7) Սալու, Ամոկ, Քեղկիա, Յեդայիա. այս

[4] Եբր. սա համդերձ եղբարբք իւրովք էր ի վերայ օրհնութեանցն. (9) Եւ եղբարքն նոցա Բակբուկիա եւ Ուննի յանդիման նոցա ի կարգին իւրեանց։

(10) Եւ Յեսու ծնաւ զՅովակիմ, եւ Յովակիմ ծնաւ զԵղիասիբ, և Եղիասիբ ծնաւ զՅովիադա, (11) Եւ Յովիադա ծնաւ զՅովնաթան, և Յովնաթան ծնաւ զՅադդուա։

(12) Եւ յաւուրս Յովակիմայ էին քահանայք գլուխք տոհմից. ի Սարայիայ՝ Մարայիա, յԵրեմիայ՝ Անանիա, (13) յԵզրայ՝ Մեսուղամ, յԱմարիայ՝ Յովհանան, (14) ի Մաղուքայ՝ Յովնաթան. ի Սաբանիայ՝ Յովսէփ, (15) Ի Հարիմայ՝ Եդնա, ի Մարիովթայ՝ Քեղկիա, (16) ՅԱդդովայ՝ Զաքարիա, ի Կանաթոնայ՝ Մեսուղամ, (17) ՅԱբիայ՝ Զեքրի, ի Մինիամինայ, ի Մովադիայ՝ Փաղտի, (18) Ի Բեղգայ՝ Սամուա, ի Սեմայիայ՝ Յովնաթան, (19) Ի Յովարիբայ՝ Մաթանա, ի Յեդայիայ՝ Ոզի, (20) Ի Սաղղուայ՝ Կաղղա, յԱմոկայ՝ Եբեր, (21) Ի Քեղկիայ՝ Ասաբիա, ի Յեդայիայ՝ Նաթանայէլ։ [5] Եբր. Դարեհի Պարսկի [6] Եբր. Յեսու որդի Կադմիելի. եւ եղբարք նոցա յանդիման նոցա [7] Եբր. դաս առ դաս։ (25) Մաթանիա, Բակբուկիա, Աբդիա, Մեսուղամ, Տեղմոն, Ակկուբ, պահապանք, դռնապանք ի պահպանութիւն ի չտեմարանս դրանց։ [8] Եբր. Նէեմայ կուսակալի եւ Եզրայ քահանայի դպրի։

սաղեմի՝ խնդրեցին զՂեւտացիսն ի տե-
ղիս իւրեանց՝ ածել զնոսա յԵրուսաղէմ,
եւ առնել զնաւակատիս ուրախութեամբ
հանդերձ եւ գոհութեամբ եւ երգովք
նուագարանօք, ծնծղայիւք եւ քնարօք
եւ սաղմոսարանօք [1]եւ ի ձայն եղջեր
28 փողոյ": Եւ ժողովեցան ամենեքեան որք
երգէին եւ սաղմոսէին չուրջանակի յա-
29 մենայն կողմանց [2]Երուսաղեմի, ի քա-
ղաքաց եւ ի գիւղից եւ ի բնակութեանց
իւրեանց, գալ ի սպաս պաշտաման
30 յԵրուսաղէմ": Եւ սրբեցան ամենայն քա-
հանայքն եւ Ղեւտացիքն, եւ սրբեցին
զժողովուրդն եւ [3]զգանապանս մեծի
31 դրանց պարսպին: Եւ հանին" ի վեր
զիշխանս Յուդայ ի պարիսպն. եւ [4]եր-
թային զհետ նոցա երգովք նուագա-
32 րանօք երկու երկու, Յովսիա եւ Ովսիա"
33 եւ կէս իշխանացն Յուդայ, Ազարիաս,
34 Եզրա եւ Մոսողամ, Յուդա եւ Բենիա-
35 մին եւ Սամէաս եւ Երեմիաս: Եւ յորդ-
ւոց քահանայիցն էին որք հարկանէին
զփողն՝ Զաքարիաս որդի Յովնաթանայ
որդի Սամայի, որդի Մաթանիա, որդի
Միքայ, որդի Զաքուր, որդի Ասափ:
36 Եւ եղբարք [5]նոցա Սամէիա եւ Եզրիէլ
օրհնէին զերգս եւ զսաղմոս Դաւթի
առն Աստուծոյ զոր նուագեալ: Եւ
Եզրաս դպիր երթայր առաջի նոցա ի
վերայ դրանցն, եւ որք երգէինն եր-
37 թային ընդդէմ նորա: Եւ" եկին յաս-
տիճանս քաղաքին Դաւթի, յելս պա-
րսպին՝ ի վերայ քան զապարանս Դաւթի,
մինչեւ ի դուռն Ջրոյն [1]Եփրեմի, եւ"
39 ընդ կողմն արեւելից, [6]Եւ ի դուռն Եք-
Թեւրան, եւ յաշտարակն Անանայելի
եւ մինչեւ ի դուռն Զբրիլխայն. եւ լսելի
եղեւ ձայն երգոցն մինչեւ յամենայն
տեղիս. քանզի հրամայեաց Եզր կալ ի
43 վերայ ամենայն դրանցն եւ երգել" Եւ
զոհեցին յաւուր յայնմիկ զոհս մեծա-
մեծս, եւ ուրախ եղեն յոյժ. վասն զի
Աստուած արար ուրախ զնոսա յուրա-
խութիւն մեծ. եւ կանայք նոցա եւ
որդիք նոցա ուրախ եղեն, եւ լսելի ե-
ղեւ ուրախութիւն [7]նոցա յԵրուսաղեմէ"
մինչեւ ի հեռաւոր տեղիս:
44 [8]Եւ կացուցին յաւուր յայնմիկ ի վե-
րայ գանձանակի գանձուցն եւ զառա-
ջաւորացն եւ տասանորդացն, եւ որ
միանգամ ժողովեալ էր անդր յիշխա-
նաց քաղաքին, որպէս հրամայեալ էր
յօրէնսն Մովսիսի քահանայիցն եւ Ղեւ-
տացւոց. քանզի ուրախութիւն մեծ էր
ի Յուդա եւ ի քահանայս եւ յՂեւտա-
ցիս. եւ զգուշացան սրբութեանցն Աս-
տուծոյ եւ պահեցին զպրութիւնն՝ որ
էին երգեցիկք սաղմոսասացքն եւ դռնա-
պանքն, որպէս կարգեալ էր Դաւթի եւ
45 որդւոյ նորա Սողոմոնի: Քանզի յաւուրս
Դաւթի՝ Ասափ էր իշխան եւ առաջնորդ
երգոց սաղմոսացն, որք նուագէին, եր-
գէին եւ փառաւոր առնէին զԱստուած:"
47 Եւ ամենայն Իսրայէլ յաւուրս Զորաբա-
բելի եւ յաւուրս Նէեմեայ՝ տային մասն
եւ բաժին երգեցկացն եւ դռնապանացն,

---

[1] Յայլ. փողոց  [2] Այլ. Երուսաղեմի եւ ի գեղից Նետոփաթացւոց. (29) Եւ ի Բեթգաղգաղայ եւ ի դաշտաց Դարայ եւ յԱզմաւեթայ. զի շինեալ էր երգեցողացն գեղս շուրջ զԵրուսաղեմաւ.  [3] Այլ. զդրունսն եւ զպարիսպն: (31) Եւ հանի  [4] Այլ. կարգեցի եր կուս դասս մեծամեծս երգեցողաց. խաղալ յառաջ ի վերայ պարսպին յաջոյ կողմանէ ի դուռն Աղբից. (32) Եւ երթայր զկնի նոցա Ովսէիա  [5] Այլ. Նոքա Սեմէիաս, Ազարիէլ, Միլաղա, Գիղաղա, Մաաս, Նաթանայէլ, Յուդա, Անանի նուագարանօք Դաւթի առնն Աստուծոյ. եւ Եզրաս դպիր առաջի նոցա: (37) Եւ եկին ի դուռն Աղբերն եւ դէպ ուղիղ  [6] Այլ. (38) Եւ երկրորդ դաս երգեցողացն երթայր ի հանդիպոյ, եւ ես զկնի նոցա ընդ կէսս ժողովրդեանն ի վերայ պարսպին յաշտարակէ անտի Փռանցն մինչեւ ի պարիսպն լայն. (39) Եւ ի վերայ դրանն Եփրեմի եւ ի վերայ դրանն Հնոյ եւ ի վերայ դրան Ձկանցն, եւ աշտարակին Անանայելի եւ աշտարակին Մէայ մինչեւ ի դուռն Ոչխարաց, եւ կացին առ դրան Բանտին. (40) Եւ երկոքին դասք երգեցողացն կացին ի տանն Աստուծոյ. եւ ես եւ կէս ատենականացն ընդ իս. (41) Նա եւ քահանայքն Եղիակիմ, Մաասիա, Մինիամին, Միքիա, Եղիովենայի, Զաքարիա, Անանիա՝ փողովք. (42) Եւ Մաասիա եւ Սեմէիա եւ Եղիազար եւ Ոզի եւ Յովհանան եւ Մեղքիա եւ Եղամ եւ Եզեր. յայնժամ երգեցողքն ամբարձին զձայնս իւրեանց ընդ Յեզերեայ վերակացուի:  [7] Այլ. Երուսաղեմի  [8] Այլ. Եւ կարգեցան յաւուր յայնմիկ արք ի վերայ սենեկաց վասն գանձուն, ընծայից, երախայրեաց եւ տասանորդաց, առ ի կուտելոյ ի նոսա զբաժինս օրինաց ագարակի քաղաքաց վասն քահանայից եւ Ղեւտացւոց, զի ուրախութիւն Յուդայ էր ի վերայ քահանայից եւ ի վերայ Ղեւտացւոց կացելոց. (45) Եւ պահեցին զպահպանութիւն Աստուծոյ իւրեանց, եւ զպահպանութիւնն սրբութեան, եւ երգեցիկքն եւս եւ դռնապանք ըստ պատուիրանացն Դաւթի եւ որդւոյ նորա Սողոմոնի. (46) Զի յաւուրց անտի Դաւթի եւ Ասափայ էին գլխաւորք երգեցողաց եւ երգք գովութեան եւ օրհնութեան առ Աստուած:

որպէս եւ կարգեալ էր օր ըստ օրէ, եւ
[1]ածնէին սուրբ զՂեւտացիսն եւ Ղեւ-
տացիքն զորդիսն Ահարոնի՞։

ԳԼ. ԺԳ

1 Յաւուր յայնմիկ կարդացին զգիրս Մով-
սիսի ի լսելիս ժողովրդեանն. եւ գտաւ
ի նմա գրեալ այսպէս, եթէ Մի մտցէ
Ամմանացի եւ Մովաբացի յեկեղեցի Աս-
2 տուծոյ յաւիտենս ժամանակաց, Վասն
զի ոչ եկին ընդ առաջ որդւոյն Իսրա-
յելի հացիւ եւ ջրով, այլ կալան ի վար-
ձու զԲաղաամ [2]զէտ՝ անիծանել զնոսա.
եւ դարձոյց Աստուած մեր զանէծսն
3 յօրհնութիւն։ Եւ եղեւ յորժամ լուան
յօրինացն, որոշեցին ի բաց զամենայն
խառնակսն յԻսրայէլէ։
4 Եւ յառաջ քան զայս Եղիասիբ քահա-
նայ էր ի գանձանակի տանն Աստուծոյ
5 մերոյ, եւ [3]էր ազգի Տուբիայ, Եւ շի-
նեաց իւր անդ տուն գանձի մեծ. եւ
անդ էր յառաջնում ուր տային զմա-
նայն եւ զլիբանոն եւ զկահն սրբու-
թեանն, եւ զտասանորդս ցորենոյն եւ
գինւոյ եւ ձիթոյ եւ իւղոյ, զաճիկսն
Ղեւտացւոցն եւ երգեցկացն եւ դռնա-
պանաց, եւ զառաջաւորս քահանայիցն
6 Եւ մինչ զայս ամենայն առարեալ էր,
ես ոչ էի յԵրուսաղէմ. քանզի յամի ե-
րեսներորդի եւ երկրորդի [*]Արտաշիսի
թագաւորի Բաբելացւոյ՝ մտի առ թա-
գաւորն. եւ յետ [2]բազում աւուրց խնդ-
7 րեցի ի թագաւորէն, Եւ եկի յԵրուսաղէմ,
եւ իմացայ զամենայն չարութիւնս զոր
արար Եղիասիբ վասն Տուբիայ, զի ետ
նմա շինել տուն գանձու ի գաւիթ տանն
8 Տեառն։ Եւ չար թուեցաւ առաջի իմ
յոյժ եւ ընկեցի արտաքս զամենայն կահ
9 Տուբիայ ի տանէն գանձու, Եւ հրամա-
յեցի սրբել զտուն գանձուն [2]Տեառն, եւ
դարձուցի անդրէն զկահ [4]եւ զսպաս
տանն Տեառն եւ զմանանայն եւ զլիբա-
10 նոն՞։ Եւ գիտացի եւ հասի ի վերայ՝
եթէ զբաժին Ղեւտացւոցն ոչ էր տուեալ,
եւ նոքա էին գնացեալ յագարակս իւր-
եանց, Ղեւտացիքն եւ երգեցիկքն

[1] Ոմն. սրբէին Ղեւտացւոցն, եւ Ղեւտացիքն՝ որդւոցն Ահարոնի [2] Յոմն. դ-ղ-ե [3] Ոմն. զի էր մերձաւոր Տուբիայ. (5) Արար նմա սենեակ մեծ ուր դնէին յառաջնումն զընծայն հացի եւ զկնդրուկն եւ զանօթսն [*] Ոմն. Ասուերոսի [4] Ոմն. տանն Աստուծոյ, զընծայն հացի եւ զկնդրուկն.

11 գործէին զգործ մշակութեանն։ Եւ կա-
ղեցայ ընդ իշխանսն եւ ասեմ, Ընդէ՞ր
[5]պակասեցին ռոճիկք ի տանէ Տեառն.
եւ ժողովեցի զամենայն զսպասաւորսն՞
եւ կարգեցի զնոսա ի տեղիս իւրեանց։
12 Եւ ամենայն Հրեայք բերէին զտասա-
նորդս ցորենոյ եւ գինւոյ եւ ձիթոյ ի
13 գանձանակ [2]տան Տեառն՞։ Եւ հրամա-
յեցի տալ ի ձեռս Սելեմիայ քահանայի եւ
Սադովկայ դպրի, եւ Փադայեայ որ էր
յՂեւտացւոցն, եւ [6]ի ձեռանէ նոցա Ա-
նան որդի Զաքուր, որդի Մաթանայի.
վասն զի հաւատարիմ էին նոքա որք
բաժանէին եւ տային եղբարց իւրեանց։
14 [7]Յիշեսցէ զիս Աստուած յայսմ ամե-
նայնի, եւ մի՛ ի բացէ արասցէ զողոր-
մութիւն իւր յինէն. վասն զի արարի
զայս ամենայն ի տան Տեառն Աստու-
ծոյ Իսրայելի՞։
15 Յաւուրսն յայնոսիկ տեսանէի ի Հրէ-
աստանի՝ զի հարկանէին հնձանս յաւուր
շաբաթու, եւ բերէին զորայսն [2]ընդ
դրունս Երուսաղեմի՞. եւ կախէին բեռն
զրաստուց, զգինի եւ զխաղող եւ զթուզ,
բարձեալ բեռինս բերէին յԵրուսաղէմ
յաւուր շաբաթու. եւ [8]կոչեալ վկայի՝
16 զի վաճառէին յաւուր շաբաթու, Եւ
նստէին ի տեղիս վաճառացն որք՞ բե-
րէին զձուկն եւ զամենայն վաճառս,
եւ [9]գնէին յաւուր շաբաթու Հրեայքն
17 ի ներքս՞ յԵրուսաղէմ։ Եւ կագեցայ
ես [2]ընդ որդիսն Հրէից որք էին յԵրու-
սաղէմ, եւ՞ ընդ իշխանսն Յուդայ, եւ
ասեմ ցնոսա, Զինչ է անօրէնութիւնս
այս զոր դուք գործէք, եւ պղծէք [10]զա-
18 ւուրս սուրբ շաբաթու՞։ Ո՞չ այսպէս
արարին հարքն ձեր, եւ ած ի վերայ
[11]նոցա Աստուած զչարիս զայս ամե-
նայն, եւ ի վերայ քաղաքիս այսորիկ.
եւ արդ դուք ընդէ՞ր յաւելուք զբար-
կութիւն ի վերայ Իսրայելի [12]եւ պղծէք
19 զօրն սուրբ զշաբաթուց։ Եւ եղեւ յոր-
ժամ կանգնեցի զդրունս՞ Երուսաղեմի

[5] Ոմն. թողեալ իցէ տունն Աստուծոյ. եւ ժողովեցի զնոսա (զՂե-տացի-) [6] Ոմն. ընդ ձեռամբ [7] Ոմն. Յիշեա զիս, Աստուած իմ, վասն այսորիկ. եւ մի՛ ջնջեր զողորմութիւնս իմ, զորս արարի վասն տանն Աստուծոյ իմոյ, եւ վասն պաշտամանց նորա. [8] Ոմն. յաւուրսն յորս վաճառէին զպաշարն՝ յանդիմանեցի. (16) Եւ Տիւրացիքն որ բնակէին անդ՝ [9] Ոմն. վաճառէին յաւուր շաբաթու որդւոցն Հրէից եւ [10] Ոմն. զօր շաբաթուն [11] Ոմն. մեր [12] Ոմն. ի պղծել զշաբաթն. (19) Եւ եղեւ յորժամ նսեմանային դրունք

յառաջ քան զշաբաթն, հրամայէի փակել
զդրունսն, եւ ոչ տայի բանալ զնոսա
մինչեւ անցանէր շաբաթն. եւ զպատանեայ
կացուցի մանկունս պահապանս, զի մի՛
ոք իշխեսցէ մտանել բեռամբ յաւուր
20 շաբաթու ընդ դրունսն Երուսաղեմի։ Եւ
ագանէին ամենեքեան որք վաճառէին՝
արտաքոյ Երուսաղեմի միանգամ եւ եր-
21 կիցս։ Եւ ասեմ ցնոսա, Ընդէ՞ր ագա-
նիք դուք արտաքոյ պարսպին. եթէ եւ
[1]այլ անգամ զանօրէնութիւնդ գայդ,
տամ հրաման այսպէս՝ զի ոչ մտանիցէք
22 դուք ի շաբաթս մեր եւ ի քաղաքս։ Եւ
ասեմ ցՂեւտացիսն որք էին սրբեալ,
եւ գային պահէին զդրունսն, եւ սրբէին
զաւուր շաբաթու. եւ յայնմ հետէ ոչ
պղծեցին զշաբաթսն՚։ Եւ յայսմ ամե-
նայնի յիշեսցէ զիս Աստուած, եւ խնա-
յեսցէ յիս ըստ բազում ողորմութեան
իւրում։
23 Եւ յաւուրսն յայնոսիկ տեսի զՀրէայսն,
[2]զի նստէին կանայք Ազովտացիք եւ
24 Ամոնացիք եւ Մովաբացիք, Եւ որդիք
նոցա եւ ոմանք ի կանանցն խօսէին Ա-
զովտացի, եւ ոչ գիտէին խօսել Հրէ-
25 արէն՚։ Եւ կագեցայ ընդ նոսա, եւ նզո-
վեցի զնոսա, եւ հարի ի նոցանէ [3]արս
բազումս՚. եւ երդմնեցուցի զնոսա յանուն
Աստուծոյ, զի մի՛ տայցեն զդստերս իւ-
րեանց որդւոց նոցա, եւ մի՛ զդստերս նոցա
26 ածցեն որդւոց իւրեանց։ [4]Եւ ասեմ ցնո-
սա՚, Ո՞չ յայդմ ամենայնի մեղաւ Սո-
ղոմոն թագաւոր Իսրայէլի. [5]եւ ո՞վ էր
իբրեւ զնա ի մէջ ազգացն յամենայն թա-
գաւորս մեր՚. եւ սիրելի էր նա Աս-
տուծոյ, եւ կացոյց զնա Աստուած թա-
գաւոր ի վերայ ամենայն Իսրայէլի. [6]եւ
զայնպիսի սիրելի Աստուծոյ եւ զիմաս-
տուն եւ զմեծ թագաւոր՝ խոտորեցու-
ցին եւ յանցուցին ի մեղս կանայք այլ-
27 ազգեաց՚։ Եւ արդ մի՛ լուայց եթէ ոք
արասցէ զայնպիսի մեծ չարութիւնս,
եւ մեղիցէ առ Աստուած, եւ արասցէ
28 կին այլազգի։ Եւ [7]յորդւոցն Յովիդեայ
եւ յԵղիասիբայ մեծ քահանայէն, լուայ
թէ էր կին նորա դուստր Սանաբաղա-
տայ՚, եւ մերժեալ հալածեցի զնա յինէն։
29 [8]Յիշեսցէ զնոսա Աստուած ի ժառան-
գութեան եւ յուխտի քահանայութեան։
30 Եւ զՂեւտացիսն սրբեցի յամենայն այ-
լազգեաց, եւ կարգեալ կացուցի զնոսա
օր ըստ օրէ՝ զքահանայսն եւ զՂեւտա-
ցիսն այր իւրաքանչիւր ի գործ իւր.
31 Եւ տուր կարգ բերել զամենայն փայտ
ողջակիզացն յիւրաքանչիւր ժամանակս,
եւ զպտուղ առաջաւորն պտղոյ իւրեանց։ Յի-
շեսցէ զիս Աստուած մեր յամենայն բա-
րութիւնս արդարութեան, այն որ օրհ-
նեալն է յաւիտեանս։ Ամէն։՚

[1]Եբր. այլ եւս կրկնիցէք. մխեցից զձեռն իմ ի ձեզ։ Եւ այնուհետեւ ոչ եկին ի շաբաթու։ (22)Եւ ասեմ ցՂեւտացիսն սրբել զանձինս իւրեանց, եւ գալ պահել զդրունսն, եւ սուրբ առնել զօր շաբաթուն [2]Եբր. որ բնակեցուցանէին կանայս Ազովտացիս եւ Ամոնացիս եւ Մովաբացիս. (24)Եւ որդիք նոցա խօսէին կէս զլեզու Ազովտացւոց եւ ոչ գիտէին խօսել Հրէարէն եւ ըստ լեզուի այլոց ազգաց [3]Եբր. արս, եւ փետեցի զհերս նոցա [4]Եբր. [illegible]

[5]Եբր. եւ ոչ գոյր թագաւոր իբրեւ զնա յազգս բազումս [6]Եբր. եւ զնա իսկ յանցուցին կանայք օտարոտիք [7]Եբր. մին յորդւոցն Յովիդեայ, որդւոյ Եղիասիբայ մեծ քահանայէն, էր փեսայ Սանաբաղատայ Որոնացւոյ [8]Եբր. Յիշեա զնոսա, Աստուած իմ, որ պղծեցին զքահանայութիւն եւ զուխտ քահանայութեան եւ զՂեւտացւոց։ (30) Եւ սրբեցի զնոսա յամենայն այլազգեաց, եւ կարգեցի պահպանութիւնս վասն քահանայից եւ Ղեւտացւոց, իւրաքանչիւր ի պաշտաման իւրում։ (31)Եւ վասն ընծայի փայտիցն ի ժամանակս սահմանեալս, եւ վասն երախայրեաց։ Յիշեա զիս, Աստուած իմ, ի բարութիւն

# ԵՍԹԵՐ

## ԳԼՈՒԽ ԺԱ

1 [1]ՅԱՄԻՆ երկրորդի թագաւորու-
2 թեանն Արտաշխի արքայի մեծի,
յառաջնում աւուր ամսոյն Ադարայ,
որ է Հայերէն Արեգ, տեսիլ ետես
Մուրթքէ որդի Յայիրայ, որդւոյ Սեմ-
եայ, որդւոյ Կիսեայ, յազգէ Բենի-
3 ամինի, այր Հրեայ. Եւ էր բնակեալ ի
[2]Սուսա քաղաքի. այր մեծ եւ հաւատա-
րիմ ամենայն իրաց տան թագաւորին։
4 Եւ էր նա ի գերութենէ անտի զոր գեր-
եաց Նաբուքոդոնոսոր արքայ Բաբելաց-
ւոց յԵրուսաղեմէ՝ Յեքոնիաւ հանդերձ
5 արքայիւն Հրէաստանի։ Եւ այս է երազ
տեսլեան նորա զոր տեսանէր. Ձայն
խռովութեանց եւ որոտմանց եւ շարժ-
մանց. եւ էր խռովութիւն մեծ ի վերայ
6 երկրի։ Եւ ահաւասիկ երկու վիշապք
մեծք յոյժ, պատրաստեալ ելանէին ի
7 կռիւ ընդ միմեանս։ Եւ եղեւ ի նոցանէն
ձայն մեծ, եւ ի ձայնէ բարբառոյ նոցա
պատրաստեցան ամենայն ազգք ի պա-
տերազմ, զի տացեն պատերազմ ընդ
8 ազգին արդարոյ։ Եւ էր օրն խաւարին
եւ մթին, տառապանաց եւ նեղու-
թեանց, եւ էր խռովութիւն մեծ ի վերայ
9 երկրի. Եւ խռովեցաւ ամենայն ազգն
արդար վասն իւրեանց չարեացն, եւ
պատրաստեցան ի կորուստ. եւ կար-
10 դացին նոքա առ Աստուած։ Եւ ի ձայնէ
անտի նոցա եղեւ իբրեւ ի փոքրիկ աղ-
11 բերէ գետ մեծ՝ յաճախ։ Եւ արեգակն
ծագեաց, եւ խոնարհքն բարձրացան եւ
12 կերան զփառաւորսն։ Եւ զարթեաւ
Մուրթքէ ի տեսլենէ անտի յայնմանէ,
զոր Աստուածն խորհեցաւ առնել. եւ
ունէր զտեսիլ երազոյն ի սրտի իւրում,
եւ յամենայն գործութենէ իւրմէ կամէր
գիտել՝ եթէ զինչ իցէ տեսիլն զոր ետես
անձն ի նմին գիշերի։

## ԳԼ. ԺԲ

1 [1]Եւ դադարեաց Մուրթքէ յապարանսն
Գաբաթեաւ հանդերձ եւ Թառայիւ եր-
կոքումբք ներքինեօք թագաւորին, որ
էին պահապանք ապարանից թագաւո-
2 րին։ Եւ իբրեւ գիտակ եղեւ Մուրթքէ
խորհրդոց ներքինեացն, եւ զկամս
սրտից նոցա քննեաց՝ եթէ պատրաստեալ
են նոքա ձեռն արկանել ի թագաւորն
Արտաշէս, եցոյց արքային զխորհուրդս
3 նոցա։ Եւ եհարց թագաւորն զերկոսին
ներքինիսն, եւ նոքա խոստովան եղեն
նմա. եւ հրամայեաց զնոսա կախել։
4 Եւ գրեաց թագաւորն զբանս զայսոսիկ
ի յիշատակս, եւ Մուրթքէ գրեաց վասն
5 բանիցս այսոցիկ։ Եւ ետ հրաման թա-
գաւորն Մուրթքէի, մեծաւ զգուշու-
թեամբ սպասել եւս զարման առնել
տան թագաւորին. եւ ետ նմա պար-
6 գեւս Եւ էր Համան Ամադաթեայ Բուկ-
եցւոյ փառաւոր առաջի արքային, եւ
կամեցաւ չարչարել զՄուրթքէ եւ զժո-
ղովուրդ նոցա վասն երկուց ներքին-
եացն։

## ԳԼ. Ա

1 Եւ եղեւ [3]յետ բանիցս այսոցիկ յաւուրս
Արտաշխսի, (որ եւ այս Արտաշէս՝ կա-
լաւ ի Հնդկաց աշխարհէն մինչեւ յԵ-
թովպիա հարեւր քսան եւ եւթն գա-
2 ւառ,) [4]Ի նմին աւուրս յորս նստաւ ի
3 Սուսա քաղաքի՝, Յամին երրորդի թա-
գաւորութեանն իւրոյ, արար [5]թագա-
ւորն կոչունս սիրելեաց իւրոց եւ մե-

[1] Այս գլուխ պակասէ յԵբրայականէն [2] Այլ Եբր. Շուշան, որ եւ ասի Սուսէն, Սիւսան, Սուսիս, նաեւ Շաւշ։

[3] Եբր. յաւուրս Ասուերոսի, (այս Ասուերոս [4] Եբր. Յաւուրսն յայնոսիկ իբրեւ նստաւ Ասուերոս յաթոռ թագաւորութեան իւրոյ որ ի Շուշան քաղաքի [5] Եբր. կոչունս ամենայն իշխանաց իւրոց եւ ծառայից իւրոց. զօրն Պարսից եւ Մարաց, նախարարք եւ իշխանք գաւառաց էին առաջի նորա, (4) ի ցուցանել

ծառայից, եւ այլոց եւս ազգաց Պարսից
եւ Մարաց, եւ ամենայն իշխանաց նա-
4 խարարացն։ Եւ իբրեւ եցոյց" նոցա զմե-
ծութիւն թագաւորութեանն իւրոյ, եւ
զփառս ուրախութեան վայելչութեանն
զաւուրս հարեւր եւ ութսուն։
5 Եւ յորժամ յանդ եղանէին [1]աւուրք
հարսանեացն, դարձեալ միւսանգամ
հրաման ետ կոչել ի հարսանիսն զամեկ
քաղաքայինս իւր ի գաւիթ տանն ար-
6 քունի զաւուրս վեց։ Եւ էր զարդար-
եալ բեհեզովք եւ կերպասովք՝ զորս էր
կարկեալ եւ կազմեալ զլարովքն ծիրան-
եօք եւ բեհեզովք, եւ զորս էր կապ-
եալ ի խոյակսն ոսկիս, եւ ի ծերանիս՝
որ կային ի վերայ սեանցն պատուակա-
նաց եւ ի խարսխացն ոսկեղինաց. ուր
կային գահոյք բազումք ոսկեղէնք եւ
արծաթեղէնք ընդելուզեալք մարգար-
տօք եւ ակամբք պատուականօք՝ լցեալս
պաստառօք եւ գունագոյն նկարու ք եւ
պատուական հանդերձիւք ի վերայ վար-
7 դայատակ զաւթին. Ուր կային թա-
կոյք եւ ըմպելիք թագաւորին ոսկեղէնք
եւ արծաթեղէնք, որք էին յերից բիւ-
րուց քանքարաց, եւ գինի յոյժ ար-
8 քայի ըմպելի։ Այլ կոչունքս որպէս
օրէն էր եղեւ. վասն զի այսպէս կա-
մեցաւ թագաւորն առնել սպասաւորաց
9 ծառայիցն ։" Եւ Աստինէ կին թագա-
ւորին արար կոչունս կանանց յապա-
րանս թագաւորին *Արտաշիսի։
10 Եւ յաւուրն եւթներորդի յանձն իւր
զուարճացեալ լինէր թագաւորն. եւ ասէ
ցԱման եւ ցԲազան եւ ցԹառա եւ ցԲու-
րազէ եւ ցԱթեկթա եւ ցԲատեսգա եւ
ցԹառաբա, ցեւթանեսին ներքինիս՝
11 ցպաշտօնեայս իւր, կոչել [2]զկինն յար-
քունիս թագաւորեցուցանել զնա, եւ"
ցուցանել ամենայն իշխանաց եւ ազգաց
զգեղեցկութիւն նորա. զի էր գեղեցիկ
12 յոյժ։ Եւ ոչ լուաւ նմա Աստինէ գալ
առ նա [3]ընդ ներքինիսն". եւ տրտմեցաւ
թագաւորն եւ բարկացաւ յոյժ։
13 Եւ ասէ [4]ցսիրելիսն իւր զիրան զոր
արար Աստինէ. Արդ արարէք, ասէ
թագաւորն, այսուհետեւ օրէնս եւ ի-
14 րաւունս։ Եւ մատեան առաջի նորա
Արքինէսոս եւ Ասնաթեւ եւ Մաղիսեար՝
իշխանք Պարսից եւ Մարաց, որ էին
մերձաւորք եւ աթոռակիցք արքային,
15 Եւ պատմեցին եթէ ո՞րպէս" օրէն է
առնել Աստինեայ կնոջ թագաւորին,
զի ոչ արար զհրամանս արքային, զոր
հրամայեաց նմա ի ձեռն ներքինեացն։
16 Եւ ասէ [5]Մուքեւս յարքայ եւ ցիշ-
խանսն, Ոչ եթէ արքայի միայն ընդդէմ
դարձաւ Աստինէ տիկնանց տիկին, այլ
ամենայն իշխանաց եւ [6]կուսակալաց ար-
17 քայի։ Սոյնպէս եւ ամենայն կանայք
լինին անհնազանդ իշխանաց Պարսից եւ
18 Մարաց", Յորժամ լսեն զարհամարհանս
կնոջ թագաւորիս, համարձակին իշխել
19 եւ անարգել զարս իւրեանց։ Արդ, եթէ
կամք իցեն եւ հաճոյ թուեսցի ար-
քայի, [7]մի՛ մտցէ նա առ արքայ. եւ
զտիկնութիւն նորա տացէ կնոջ որ լաւ
20 եւս իցէ քան զնա։ Եւ լուիցեն զօրէնս
զոր հրամայես ի թագաւորութեանդ
[8]քում, եւ պատուեսցեն կանայք զարս
իւրեանց սպասուով մեծաւ՝ յաղքատաց
մինչեւ ի մեծամեծս։

[1]Եբր. աւուրքն այնոքիկ. արար արքայ ամենայն ժողովրդեանն որ ի Շուշան քաղաքի, ի մեծամեծաց մինչեւ ցփոքունս, կոչունս աւուրս եւթն, ի գաւթի պարտիզի տանն արքունի։ (6) Վարագոյրք ի սպիտակ եւ ի կապուտակ կերպասէ կախեալ էին լարիւք ի նուրբ բեհեզոյ եւ ի ծիրանւոյ, եւ օղակօք արծաթեօք ի սեանց որ ի մարմարիոնէ. եւ ի վերայ յատակի ի պորփիւրէ, ի սպիտակ մարմարիոնէ, յալաբաստրէ եւ ի սեաւ մարմարիոնէ կային գահոյք ոսկեղէնք եւ արծաթեղէնք։ (7) Եւ էր ըմպել յանօթս ոսկեղէնս, եւ անօթքն էին այլեւայլք. եւ գինի արքունի բազում որպէս վայել էր արքայի։ (8) Եւ ըմպելն էր ըստ օրինի. ոչ ոք բռնադատէր. քանզի այսպէս հրամայեալ էր արքայ ամենայն պաշտօնէից տան իւրոյ, առնել ըստ կամաց առն իւրաքանչիւր։ *Եբր. Ասուերոսի

[2]Եբր. զԱստինէ տիկին առաջի արքայի թագաւոն արքունի, [3]Եբր. ըստ բանին արքայի որ ի ձեռն ներքինեաց [4]Եբր. արքայ ցիմաստունս որ գիտէին զժամանակս. (այսպէս էր սովորութիւն արքայի ընդ ամենեսին որ գիտէին զօրէնս եւ զիրաւունս։ (14) Եւ եւթանեքին իշխանք Մարաց և Պարսից՝ Կարսենա, Սեթար. Ադմաթա, Թարսիս, Մերէս, Մարսենա, Մեմուքան որ էին մօտ առ նա եւ տեսանէին զերեսս արքայի՝ էին առաջին խորհրդականք թագաւորութեանն.) (15) Եթէ Ո՞րպէս [5]Եբր. Մեմուքան
[6]Եբր. ժողովրդոց որ են յամենայն գաւառս արքայի Ասուերոսի. (17) Զի ելցէ բան տիկնոջն առ ամենայն կանայս՝ անգոսնել զարս իւրեանց յաչս իւրեանց, և ասիցեն, Արքայ Ասուերոս ասաց ածել զԱստինէ տիկին առաջի իւր, եւ ոչ եկն։ (18) Եւ այսօր խօսեսցին զայս օրինակ տիկնայք Մարաց եւ Պարսից [7]Եբր. ելցէ հրաման արքունի յերեսաց նորա, և գրեսցի յօրէնս Պարսից եւ Մարաց, եւ մի՛ ջնջեսցի, զի մի՛ [8]Եբր. քում որ մեծ է յոյժ

21 Եւ հաճոյ թուեցաւ բանն արքային եւ
ամենայն իշխանաց նորա. եւ արար
թագաւորն որպէս խօսեցաւ [1]Մուքէոս։
22 Եւ առաքեաց ընդ ամենայն թագա-
ւորութիւնն իւր ի գաւառս ամենայն՝
ըստ հրամանին որ եղաւ ի վերայ ամե-
նայն կանանց։

ԳԼ. Բ

1 Եւ յետ բանիցս այսոցիկ [2]դադարեաց
թագաւորն ի բարկութենէ անտի, [3]եւ
ոչ յաւել յիշել եւս զԱստինէ. զի ի
միտին ունէր զոր խօսեցաւն նա. եւ
2 այսպէս մերժեալ ընկեցաւ կինն։ Եւ
ասեն սպասաւորք թագաւորին, Խնդ-
րեսցեն արքային աղջկունս կոյսս՝ գե-
3 ղեցիկս տեսանելով. Եւ հրամայեսցէ
արքայ գաւառապետս կացուցանել ընդ
ամենայն երկիր թագաւորութեանդ քո,
եւ ընտրեսցեն աղջկունս կոյսս, եւ ած-
ցեն ածել ի Սուսէն քաղաք՝ ի կանա-
նոց մի. եւ տացեն զնոսա ցներքինին
[4]արքունի՝ որ պահապանն է կանանց,
եւ [5]հրամայեսցէ արքայ տալ նոցա եւղ
4 եւ աճառ եւ զամենայն զարմանս։ Եւ
կին՝ որ հաճոյ լինի արքային թագաւո-
րեսցէ նա փոխանակ Աստինեայ։ Եւ
հաճոյ թուեցաւ արքային իրքն. արար
այնպէս։
5 Եւ էր այր մի Հրեայ ի Սիւսա քաղաքի,
եւ անուն նորա Մուրթքէոս, որդի Յա-
յիրայ, որդւոյ Սեմեայ, որդւոյ Կիսեայ,
6 յազգէ Բենիամենի. Որ էր գերի եկեալ
յԵրուսաղեմէ [6]զոր գերեաց Նաբուքո-
7 դոնոսոր արքայն Բաբելացւոց։ [7]Եւ էր
նորա մանուկ սնուցեալ դուստր Ամի-
նադաբայ՝ եղբօր հօրն իւրոյ, եւ անուն
էր նորա Եսթեր. եւ յառնուլ զնա ի մօ-
րէն եւ ի հօրէն իւրմէ՝ կամէր առնուլ
իւր կնութեան. եւ էր աղջիկն բարի
յոյժ տեսանելով։
8 Եւ յորժամ լուեալ եղեւ [8]հրաման թա-
գաւորին, ժողովեցան աղջկունք բա-
զումք ի Սիւսան քաղաք, ընդ ձեռամբ
Ովգեայ. տարան [9]զԵսթեր առ Ովգա,
9 որ էր ներքինի ի վերայ կանանց։ Եւ
հաճոյ եղեւ նմա աղջիկն, եւ եգիտ նա
շնորհս առաջի նորա, եւ փութացաւ
նմա տալ [10]զաճառն եւ զմասն զարմա-
նոյ նորա, եւ զեւթն աղջիկան զորս տու-
եալ էր նորա նաժիշտս յարքունուստ.
եւ [11]զարմանէր զԵսթեր առաւելագոյն
քան զայլ ընկերս նորա, եւ զնաժիշտս
10 նորա նոյնպէս։ Եւ ոչ եցոյց Եսթեր
զազգն եւ ոչ զգաւառն. վասն զի
պատուիրեաց նմա Մուրթքէ՝ մի պատ-
11 մել։ Եւ յաճախէր Մուրթքէ զամենայն
օր շրջել առ տամբ կանանցն, եւ տե-
սանել թէ որպիսի ինչ անցցէ ընդ
Եսթեր։
12 [12]Զի մերձ էր ժամանակ աղջկանն մտա-
նել առ թագաւորն, յորժամ լնուլին ա-
միսք երկոտասան։ (զի այսպէս կատա-
րէին աւուրք զարմանոյ նոցա. ամիսս
վեց օծանէին իւղովք անուշիւք, եւ
ամիսս վեց ի խունկս անուշունս եւ
13 [13]յաճառս եւ ի լուանալ կանանցն.) Եւ
ապա մտանէր առ արքայն. եւ որում
կամէր տալ զնա ի ձեռս նորա, մտանէր
ընդ նմա ի սենեակն առաջի թագաւո-
14 րին։ Ընդ երեկս մտանէր առ թագա-
ւորն, եւ ցերեկ երթայր անդրէն առ
ընկերս իւր, եւ առ Ովգաներքինի պա-
հապան կանանցն. եւ կայր անդէն, մին-
չեւ կոչէին զնա յականէ ի սենեակ թա-
գաւորին։

---

[1] Ոմն. Մեմուքան։ (22) Եւ առաքեաց հրովարտակս յամենայն գաւառս արքային, յիւրաքանչիւր գաւառ ըստ գրոյ իւրում, եւ առ իւրաքանչիւր ժողովուրդ ըստ լեզուի իւրում, զի կացցէ այր իւրաքանչիւր իշխան ի տան իւրում, եւ խօսեսցի զլեզու ժողովրդեան իւրոյ։ [2] Ոմն. իբրեւ դադարեաց [3] Ոմն. յիշեաց զԱսթինէ եւ զոր արարեալ էր նորա, եւ որ ինչ վճռեալ էր զնմանէ [4] Ոմն. արքունի. ցՀեգա [5] Ոմն. տացի նոցա որ ինչ պիտոյն է ի մաքրութիւն [6] Ոմն. ընդ գերեան զոր ընդ Յեքոնեայ արքայի Յուդայ [7] Ոմն. Եւ սնուցանէր զԱդասսա, այն ինքն է զԵսթեր, զդուստր հօրեղբօր իւրոյ, զի ոչ գոյին նորա հայր եւ մայր. եւ աղջիկն էր գեղեցիկ երեսօք, եւ բարւոք տեսանելով. եւ ի մեռանել հօր նորա եւ մօր նորա առ զնա Մուրթքէ իւր ի դուստր։

[8] Ոմն. հրամանն եւ հրովարտակ [9] Ոմն. զԵսթեր յարքունիս [10] Ոմն. զպէտս մաքրութեան նորա եւ զբաժինս [11] Ոմն. տարաւ զնա յազնուագոյն տեղի կանանոցին, [12] Ոմն. Եւ իբրեւ լինէր ժամանակ մտանելոյ իւրաքանչիւր աղջկան առ արքայ Ասուերոս, յետ կատարելոյ ինման երկոտասան ամսոց ըստ սովորութեան կանանց, [13] Ոմն. յորս պիտոյն էին ի մաքրութիւն կանանցն. (13) Եւ ապա մտանէր աղջիկն առ արքայն. և զոր ինչ խնդրէրն՝ տային նմա տանել ընդ իւր ի կանանցէ անտի յարքունիս թագաւորին։ (14) Ընդ երեկս մտանէր, եւ ցերեկ երթայր անդրէն յերկրորդ կանանոցն ընդ ձեռամբ Սասագազայ ներքինւոյ արքայի որ էր պահապան հարճիցն. եւ ոչ եւս մտանէր առ արքայ, եթէ ոչ հաճէր ընդ նա արքայ, եւ կոչէր նա յականէ։

15 Եւ իբրեւ լնոյր ժամանակն Եսթե-
րայ՝ դստերն [1]Ամինադաբայ եղբօր հօրն
Մուրթքէի՝՝ մտանել առ արքայն, ոչ ինչ
անփոյթ արար զոր միանգամ պատուիրե-
ալ նմա [2]ներքինին, որ էր պահապան
կանանցն, զի էր Եսթերայ գտեալ շնորհս
յամենեցունց որ միանգամ տեսանէին
16 զնա։ Եւ [3]եմուտ Եսթեր առ արքայն
յերկոտասաներորդ ամսեանն Ադար, որ
է Հայերէն Արեգ, յեւթներորդ ամի՝՝
17 թագաւորութեան նորա։ Եւ հաճոյ
թուեցաւ Եսթեր արքային յոյժ, եւ ե-
գիտ նա շնորհս քան զամենայն կա-
նայսն, եւ եդ ի վերայ գլխոյ նորա
18 [4]զթագ կանանցն՝՝։ Եւ արար թագա-
ւորն կոչունս ամենայն [5]սիրելեաց իւ-
րոց եւ զօրացն իւրոց զաւուրս եւթն,
եւ բարձրացոյց նա զհարսանիսն Ես-
թերայ. եւ հրաման ետ թողութիւն
առնել ամենեցուն որ ընդ թագաւորու-
թեամբ նորա էին։
19 Եւ Մուրթքէ զարմանէր եւ կալմէր
20 զաւանն թագաւորին՝՝։ Այլ Եսթեր ոչ եցոյց
զերկիր հայրենի պաւանին [6]իւրոյ. զի
այսպէս պատուիրեալ էր նմա Մուրթքէի,
[7]երկնչել յԱստուծոյ եւ առնել զհրամանս
նորա, որպէս էր նա առ նմա յառաջ.
եւ Եսթեր ոչ փոխեաց զիւր կարգն։
21 Եւ տրտմեցան երկու ներքինիք ար-
քային՝ որ պահպանապետքն էին մարգ-
կանն. վասն զի նախանձէին ընդ Մուրթ-
քէի՝ առաւել քան զնոսա պատուելոյ ի
թագաւորէն, եւ կամէին սպանանել
22 զԱրտաշէս արքայ։՝՝ Եւ ազդ եղեւ Մուրթ-
քէի բանս այս, եւ յայտնեաց Եսթերայ,
եւ Եսթեր եցոյց արքային [8]զխորհուրդն
23 մահուն։ Եւ արքայն կշտամբեաց զեր-
կոսին ներքինիսն, եւ կախեաց զնոսա
զփայտէ. եւ հրամայեաց թագաւորն
գրել զայն գրել զգուշութեամբ, եթէ
որպէս հաւատարիմ եղեւ առ նա Մուրթ-
քէոս։՝՝

Գլ. Գ

1 Եւ եղեւ յետ այսորիկ եւ փառաւորեաց
արքայ [9]Արտաշէս զՀաման Դաթուբաւ
հանդերձ եւ ընկերօք նորա՝՝, եւ բարձ-
րացոյց զնա յառաջին աթոռ քան զա-
2 մենայն սիրելիս իւր։ Եւ [10]ամենեքին
որ միանգամ էին ի տան թագաւորին՝
երկիր պագանէին նմա. զի այսպէս
հրամայեաց թագաւորն առնել. այլ
3 Մուրթքէ ոչ պագանէր նմա երկիր։ Եւ
խօսեցան մեծամեծք թագաւորին ընդ
Մուրթքէի եւ ասեն, [11]Մուրթքէ, ընդէ՞ր
ոչ պագանես դու երկիր Համանայ ըստ
4 հրամանի թագաւորին՝՝։ Զի յամենայն
օր խօսէին ընդ նմա, եւ նա ոչ լսէր
նոցա. եւ ամբաստան եղեն զՄուրթքէէ
առաջի Համանայ. [12]եւ Մուրթքէ ոչ
հնազանդեցաւ հրամանացն արքայի,
5 քանզի՝՝ Հրեայ էր։ Եւ յորժամ գիտաց
Համան՝ եթէ [13]ոչ պագանէ նմա երկիր,
6 բարկացաւ յոյժ։ [14]Եւ խորհուրդ արար՝՝
զի կորուսցէ զՀրեայսն որ ընդ թագա-
ւորութեամբն [15]Արտաշիսի արքայի էին։
7 Եւ արարին հանդէս համարոյ յամին եր-
կոտասաներորդի թագաւորութեանն Ար-
տաշիսի. եւ արկանէր վիճակ օր յօրէ
եւ ամիս յամսոյ, զի որպէս կորուսցէ
ի միում աւուր զազգն Մուրթքէի. եւ
անկաւ վիճակն ի չորեքտասանն ամսոյն
Ադար։՝՝

---

[1] Եբր. Աբիխայեղայ, եղբօր հօրն Մուրթքէի, զոր որդեգրել էր Մուրթքէ իւր դուստր, [2] Եբր. Հեգա ներքինին արքային [3] Եբր. տարաւ Եսթեր առ արքայն Ասուերոս յապարանս նորա արքունի, յամսեանն տասներորդի, (որ է Թէբէթ ամիս) յամի եւթներորդի [4] Եբր. զթագն արքունի, եւ արար զնա տիկին փոխանակ Աստինեայ [5] Եբր. իշխանաց եւ ծառայից իւրոց, կոչունս Եսթերայ, եւ շնորհեաց հանգիստ գաւառաց. եւ ետ պարգեւս որպէս վայել էր արքայի։

(19) Եւ իբրեւ ժողովեցին աղջկունս երկրորդ անգամ, Մուրթքէ նստէր առ դրան թագաւորին [6] Եբր. իւրոյ, եւ զազգ իւր [7] Եբր. զի Եսթեր առնէր զբանս Մուրթքէի, որպէս յորժամ սնանէրն ընդ նմա։

(21) Յաւուրսն յայնոսիկ, իբրեւ նստէր Մուրթքէ առ դրան թագաւորին, Բիգթան և Թարէս, երկու ներքինիք արքային, ի պահապանաց սեմոյ դրանն, զայրացեալ խնդրեցին մխել զձեռս յարքայ Ասուերոս։

[8] Եբր. յանուն Մուրթքէի։ (23) Եւ խնդրեցաւ բանն և գտաւ, և երկոքին կախեցան զփայտէ, և գրեցաւ ի գիրս յիշատակաց առաջի արքային։ [9] Եբր. Ասուերոս զՀաման որդի Համադաթայ Ագագացւոյ [10] Եբր. ամենայն ծառայք [11] Եբր. Ընդէ՞ր անցանես դու զհրամանաւ արքային [12] Եբր. տեսանել եթէ կացցէ Մուրթքէ ի բանս իւր. զի եցոյց նոցա եթէ [13] Եբր. Մուրթքէ ոչ [14] Եբր. Եւ դոյզն ինչ թուեցաւ յաչս նորա մխել ձեռս ի Մուրթքէ միայն, զի զգուշացեալ էին նմա զազգն Մուրթքէի, խորհուրդ արար Համան [15] Եբր. Ասուերոսի արքայի էին, զազգն Մուրթքէի։

(7) Յամսեանն առաջնում, այն է ամիսն Նիսան, յամին երկոտասաներորդի Ասուերոսի արքայի, ետ արկանել Փուր, այսինքն՝ վիճակ առաջի Համանայ օր յօրէ եւ ամիս յամսոյ մինչեւ ցերկոտասաներորդն, որ է ամիսն Ադար։

8 Եւ ¹խօսեցաւ ընդ արքային եւ ասէ՚՚,
Գոյ ազգ ցրուեալ ընդ հեթանոսս, եւ
ընդ ամենայն թագաւորութեան քում,
²որք են այլօրէնք եւ խորամանկք քան
զամենայն ազգս՚՚, եւ օրինաց արքունի
ոչ հնազանդին. եւ ոչ օգուտ են ար-
9 քայի եթէ թողու զդ զնոսա։ Արդ,
եթէ կամք լինին արքայի, հրաման տա-
ցես կորուսանել զնոսա, եւ ես կշռե-
ցից ի գանձս արքունի բեւր քանքար
10 արծաթոյ։ Եւ եհան արքայ զմատանին
իւր եւ ետ զնա ի ձեռս ³Ամանայ գրել
զՀրէիցն եւ կնքել տա ի կորուսանել
11 զնոսա՚՚։ Եւ ասէ թագաւորն ցՀաման,
Զարծաթդ կալ ընդ քեզ, եւ զազգդ
զայդ արա որպէս եւ կամիս։
12 Եւ կոչեցին զդպիրս արքունի յամ-
սեանն առաջնում, յաւուրն երեքտա-
սաներորդի, եւ գրեցին որպէս եւ հրա-
մայեաց նոցա Համան, զօրավարաց, իշ-
խանաց ընդ ամենայն գաւառս ⁴ի Հնդ-
կաց մինչեւ յԵթովպիայ՝ հարեւր քսան
եւ եւթն գաւառս, եւ իշխանացն ազ-
գաց, զիւրաքանչիւր լեզուաւ Արտա-
13 շիսի հրամանաւ՚՚։ Եւ առաքեցան հրո-
վարտակքն ի ձեռն հրեշտակաց ընդ ամե-
նայն իշխանութիւնն ⁵Արտաշիսի կո-
րուսանել զազգն Հրէից յաւուր միում,
յամսեանն՚՚ երկոտասաներորդի՝ որ է
Ադար, եւ յափշտակել զամենայն ինչս
14 եւ զստացուածս նոցա։ ⁶Եւ հրաման
հրովարտակին էր այսպէս՚՚

ԳԼ. ԺԳ

¹⁷Արքայ մեծ Արտաշէս՝ ձեզ որ էք ի
կողմանս Հնդկաց եւ Եթովպացւոց,
իշխանաց եւ սպասաց, ձեզ հնազանդե-
լոցդ, եւ ամենայն երկրիս զայս գրեմ։
2 կամեցեալ՝ ոչ յաւամբ իշխանութեանս
հպարտացեալ, այլ քաղցրութեամբ եւ
խոնարհութեամբ կարգեալ, զի զայնո-
սիկ որ ի հնազանդութեանն իցեն՝ ան-
շուշտ յամենայն ժամ հաստատել զկեանս
նոցա, զթագաւորութիւնն կացեալ խա-
ղաղութեամբ մինչեւ ի ծագս երկրիս,
առ նորոգել զխաղաղութիւնն որում
3 ցանկացան ամենայն մարդիկ. Հաւա-
տացեալ իմ որ խորհրդակիցս են իմ, զի
որպէս ի գլուխ տարցի զիրսս, որ զի-
մաստութիւն եւ զխնամ առանց փոփո-
խելոյ հաստատուն հաւատալք յայտնեալ,
որով արժանի լեալ երկրորդ աթոռակ-
4 ցութեան իմոյ Համան. Եւ եցոյց մեզ
որ ընդ ամենայն աշխարհս ազգ՝ խառ-
նեալ են զժնդակ ժողովուրդ ոմն, խա-
փան օրինաց, որք ընդդէմ կան թա-
գաւորաց, եւ ի բաց մերժեն յիւրեանց
զհրամանս առ ի չլինել նոցա, որ ի մէնջ
ուղղեալ եւ հաստատեալ անշուշտ մերոյ
5 իշխանութեանս։ Արդ կալեալ զազգս
միայն՝ բոլոմնդակ աղզաւ իւրեանց ա-
ռաջի ամենայն մարդոց որք մնադամ
իցեն, եւ զկարգս զօրինաց զօտարացի
բաց փոխել. եւ որ զժնդակքն են եւ
ընդդէմ մերոյ իրաց, յորոց ձեռաց կա-
տարին ամենայն չարիք, որք են թշնա-
6 միք մերոյ թագաւորութեանս։ Կարգե-
ցաք այժմիկ՝ վասն որոյ ձեզ ազգ ա-
րարաք գրովս մերով այսուիկ, եւ ի
Համանայ որ հաստատեալ կացեալս է ի
վերայ իրացս այսոցիկ, եւ երկրորդի
հօր մերոյ, զամենեսեան կանամբք եւ
որդւովք հանդերձ կորուսանել իսկ
սրով թշնամեաց՝ առանց զթալոյ եւ
խնայելոյ. յամսեանն երկոտասաներոր-
դում, ի չորրորդ աւուրն, որ է Ադար,
7 ի տարւոջս յայսմիկ մահու չարաւ ի
զմախս իջցեն յաւուր միում. եւ յետ
այդր ժամանակի եղիցի խաղաղութիւն
մեզ՝ ի կատարել իրացդ այդպիսի։
8 Եւ պատճէնք հրովարտակացն ախտեալ
զրեյին ընդ ամենայն գաւառսն. եւ իբրեւ
եղ հրամանն այն, ամենեքին պատրաստ
լինէին աւուրն այնմիկ. փութանակի
հասանէին իրքն այն եւ ի Շուշան քա-
ղաք. եւ թագաւորն եւ Համան զար-
զարէին զմարս իւրեանց, եւ խռովէր
ամենայն քաղաքն։՚՚

¹Եբր. ասէ Համան ցարքայ Ասուերոս ²Եբր. և օրէնք նոցա այլակերպք յամենայն ազգաց ³Եբր. Համանայ որդւոյ Ամադաթայ Ագագացւոյ թշնամւոյն Հրէից ⁴Եբր. եւ իշխանացն ի գաւառս գաւառս ըստ գրոյ նոցա եւ ամենայն ազգի ըստ լեզուի իւրում յանուն Ասուերոսի արքայի գրեցաւ և կնքեցաւ մատանեաւ թագաւորին ⁵Եբր. արքայի ջնջել սատակել, կորուսանել զամենայն Հրեայս յերիտասարդէ մինչ ցծեր, զմանկունս եւ զկանայս յաւուր միում, յերեքտասաներորդումն ամսեանն ⁶Եբր. Պատճէն հրովարտակին էր տալ հրաման ի գաւառս գաւառս, յայտ արարեալ ամենայն ազգաց կալ պատրաստ յաւուրն յայնմիկ։ (15) Սուրհանդակքն ելին տագնապաւ ի հրամանէ թագաւորին, և տուաւ պատուէր ի Շուշան քաղաքի. եւ արքայ եւ Համան բազմեցան ըմպել. այլ խռովեալ էր քաղաքն Շուշան։ ⁷Այս գլուխ պակասէ յԵբրայականէն։

Գլ. Դ

1 Եւ Մուրթքէ իբրեւ գիտաց զիրսն՝ պա-
տառեաց զպատմուճան իւր եւ զգեցաւ
քուրձ, եւ ցանեաց մոխիր զգլխով իւ-
րով, եւ ընթացաւ ընդ հրապարակս
քաղաքին. ի ձայն [1]բարձր աղաղակէր
եւ ասէր, Արդ ընդէ՞ր բառնայք զուր
ստոր տարապարտուց զազգս իմ, որ ոչ
2 ինչ գործեաց չարիս"։ Եւ եկն մինչեւ ի
դրունս տանն արքունի եւ եկաց. զի
ոչ իսկ էր արժան [2]նմա մտանել ի գա-
ւիթն արքունի, զի զգեցեալ էր զքուրձ
3 [2]եւ զմոխիր"։ Եւ ընդ ամենայն գաւառս
ուր եւ [3]կարգային զգիրն" աղաղակ եւ
կոծումն եւ սուգ մեծ լինէր Հրէիցն,
[4]եւ արկանէին քուրձ եւ մոխիր զիւր-
եամբք։
4 Եւ մտին ներքինիքն եւ նաժիշտքն
տիկնանց տիկնոջն, եւ պատմեցին Ես-
թերայ. եւ խռովեցաւ յոյժ [5]իբրեւ լուաւ
վասն հրամանին զոր ետ թագաւորն".
եւ առաքեաց զգեցուցանել զհանդերձն
Մուրթքէի, եւ հանել ի նմանէ զքուրձն.
5 եւ նա ոչ հաւանեցաւ նմա։ Եւ Եսթեր կոչ-
եաց [6]զԱռնաթեւ զներքինին իւր" որ կայր
համապազ առաջի նորա, եւ առաքեաց
ճշմարտել ի Մուրթքէէ՝ թէ այդպէս
7 ո՞րպէս [6]իցէ։ Եւ Մուրթքէ եցոյց նմա
զիրսն որպէս եւ լեալ էին, եւ [7]զխոս-
տումն զոր խոստացաւ Համան արքայի,
տալ [8]գանձ բեւր քանքար" զի կորուսցէ
8 զՀրեայսն։ Եւ զպատճէնն՝ որ ի Սուսիս
քաղաքի կարգացեալ էր առ ի կորու-
սանել զնոսա, ետ զայն ցներքինին զի
ցուցցէ Եսթերայ, [9]եւ ասէ նմա պատ-
ուիրել, զի մտցէ եւ խնդրեսցէ
յարքայէ, եւ աղաչեսցէ վասն ժողո-
վրդեանն. զի յիշեսցէ զաւուրսն տա-
ռապանաց քոց՝ որպէս եւ սնայն ի
ձեռս իմ. վասն զի Համան երկրորդ ար-
քայի՝ խօսեցաւ զմէնջ ի մահ. արդ աղա-
չեսցես զաւէր Աստուած խնդրուածովք,
եւ խօսեսցիս, ասէ, թագաւորին վասն
մեր, եւ փրկեսցես զմեզ ի մահուանէս"։
9 Եւ եմուտ [10]Առնաթեւ եւ խօսեցաւ ընդ
նմա զամենայն զբանս զայս։
10 Եւ ասէ Եսթեր [11]ցԱռնաթեւ, Գնա
11 դու առ Մուրթքէ եւ ասա, [12]Եթէ ազգ
ամենայն թագաւորութեանս գիտէ եթէ
ամենայն այր կամ կին՝ որ մտանիցէ առ
արքայ ի ներքին սենեակն տանց կո-
չելոյ նորա, չիք փրկութիւն. բայց միայն
առ որ ձգէ արքայ զոսկի գաւազանն,
նա միայն ապրի. եւ ես ոչ եմ կոչեց-
եալ մտանել առ արքայ, զի են այս
12 աւուրք երեսուն։ Եւ [13]պատմեաց Առ-
նաթեւ" Մուրթքէի զամենայն զբանսն
13 Եսթերայ։ Եւ ասէ Մուրթքէ [14]ցԱռնա-
թեւ, Երթ եւ ասա դու նմա թէ, Ես-
թեր, մի" ասեր դու յանձն քո, եթէ
ես միայն ապրեցայց ի թագաւորութեանս
14 յամենայն Հրէից. [15]Եւ ոչ լռեսցես" ի
ժամանակիս յայսմիկ, այլուստ լինի
օգնականութիւն եւ փրկութիւն Հրէից,
այլ դու եւ տուն հօր քո կորնչիք. եւ
ո՞ գիտէ եթէ ի ժամանակի յայսմիկ
15 թագաւորեցեր։ Եւ առաքեաց միւսան-
16 գամ Եսթեր առ Մուրթքէ եւ ասէ, Գնա
դու եւ ժողովեա զՀրեայսն որ են ի
Սուսիս քաղաքի, եւ պահեցէք ինձ պահս,
եւ մի՛ կերիջիք եւ մի՛ ըմպիջիք զա-
ւուրս երիս, մի՛ զտիւ եւ մի՛ զգիշեր,
եւ ես եւ նաժիշտք իմ զգուշանամք
պահել. եւ ապա մտից ես առ արքայ,
քանզի առնել զայդ՝ արտաքոյ է օրի-
նաց թագաւորին. արարից զայդ եւ եթէ
իցէ ինձ մեռանել, եւ ոչ յապաղեցից։
17 Եւ գնաց Մուրթքէ եւ արար որպէս
պատուիրեաց նմա Եսթեր։

Գլ. ԺԳ

8 [16]Եւ աղաչեաց խնդրուածովք զՏէր, ի
միտ առեալ եւ յիշեալ զգործս մեծա-
9 մեծս Տեառն, եւ ասէ, Տէր Աստուած,
թագաւոր ամենակալ, զի քում հրա-
մանիդ սպառէ ամենայն ոք. ոչ ոք է որ
ընդդէմ կայ քեզ՝ յորժամ կամիս դու
կեցուցանել զժողովուրդ քո զԻսրայէլ։
10 Զի դու Տէր արարեր զերկինս եւ զեր-

[1] Եբր. բարձր և ի դառն աղաղակէր [2] Եբր. պակասէ [3] Եբր. հասանէր գիր հրամանի թագաւորին [4] Եբր. պաշէին պահս եւ [5] Եբր. զՀաթաք ի ներքինեաց թագաւորին [6] Եբր. իցէ ։ (6) Եւ ել Հաթաք առ Մուրթքէ ի հրապարակ անդր քաղաքին որ յանդիման դրան արքունի [7] Եբր. զխոստումն արծաթոյն [8] Եբր. ի գանձն արքունի [9] Եբր. եւ յայտ արասցէ նմա եւ պատուիրեսցէ մտանել առ արքայ, եւ աղաչել զնա եւ խնդրել յերեսաց նորա վասն ժողովրդեան իւրոյ

[10] Եբր. Հաթաք [11] Եբր. ցՀաթաք [12] Եբր. Ամենայն ծառայք արքայի եւ [13] Եբր. պատմեցին [14] Եբր. ասել ցԵսթեր, Մի [15] Եբր. Զի եթէ լռելով լռեսցես [16] ԺԳ, ԺԴ և ԺԵ գլուխք պակասեն յԵբրայականն

11 կիր եւ զամենայն ոքանչելիս․ Եւ դու
տիրես ի վերայ ամենայնի, եւ ոչ ոք է
որ հակառակ կայ քում տէրութեանդ,
12 որ զամենայն գիտես․ Զի ոչ հպարտու-
թեամբ ինչ եւ ոչ ամբարտաւանու-
թեամբ եւ ոչ թշնամանօք արարի զայս
չերկրպագանել իմ երկիր ամբարտաւանին
13 Համանայ։ Այլ հաճէի եւ կամէի պա-
գանել զգարշապարս ոտից նորա առ ի
14 փրկութիւն ատնս Իսրայելի։ Այլ ծառա-
րից զայս, զի մի՛ տաց զփառս մարդոյ,
այլ քեզ միայն ճշմարտիդ Աստուծոյ․
եւ ոչ երկիր պագից ումեք՝ բայց քեզ
Տեառն իմում․ եւ ոչ արարի զայս ամ-
15 բարտաւանութեամբ։ Արդ, Տէր Աս-
տուած Աբրահամու, խնայեա դու ի ժո-
ղովուրդ քո, զի յարուցեալ են ի վերայ
մեր ապականիչք, զի ցանկացեալ են
կորուսանել զժառանգութիւն քո որ էր
16 ի սկզբանէ․ Մի՛ անտես առներ զբա-
ժին քո զոր դու քեզէն փրկեցեր յերկ-
17 րէն Եգիպտացւոց։ Լուր, Տէր, ձայնի
աղօթից իմոց, եւ քաւիչ լեր ժառան-
գութեան քում, եւ դարձո զսուգս մեր
յուրախութիւն․ զի կենդանիքս օրհնես-
ցուք զանունդ քո մեծ, Տէր․ եւ մի՛
ապականեր զբերան գայն որ օրհնէն
18 զքեզ։ Եւ ամենայն Իսրայէլ կարդացին
առ Տէր յամենայն զօրութենէ իւրեանց․
զի մահն առաջի նոցա էր։

Գլ․ ԺԴ

1 Եւ Եսթեր տիկինն ապաստանեալ առ
Տէր, եւ հաստատեալ էր ի ճիգն մեծ։
2 Եւ եհան յիւրմէ զհանդերձ փառաց թա-
գաւորութեան իւրոյ, եւ զգեցաւ նա
քուրձ նեղութեան եւ սգոյ․ եւ փոխա-
նակ պէսպէս պատուականն իւղոյն եւ
խնկոյն՝ մոխրով եւ աղբով ելից զգլուխն
իւր, եւ զմարմինն իւր ի բազում աշ-
խատութիւնս խոնարհեցոյց, եւ զամե-
նայն տեղի զարդու զգնծութեան իւրոյ՝
3 ելից ի գլխոյ հերոյց իւրոց։ Եւ մա-
տուցեալ բազում աղօթիւք խնդրուա-
ծոց հայցէր ի Տեառնէ Աստուծոյ Իսրա-
յելի եւ ասէր, Տէր իմ եւ թագաւոր
մեր, դու միայն օգնեա ինձ միայնումս,
որ ոչ ունիմ ինձ օգնական բաց ի քէն․
4 Զի վտանգ մեծ է առաջի իմ։ (5) Ես լուէի
ի ծննդենէ իմմէ՝ ի հայրենի ազգէն իմ-
մէ, եթէ դու Տէր առեր զԻսրայէլ յա-
մենայն ազգաց, եւ զհարսն մեր յազ-
գատահմէն իւրեանց ի ժառանգութիւն
քեզ յաւիտեան, եւ արարեր նոցա զա-
մենայն զոր խօսեցար։ Եւ դարձեալ եւս
յաճախեալ յաղօթսն իւր այսպէս ասէր․
Աստուած Աբրահամու, Աստուած Իսա-
հակայ եւ Աստուած Յակոբայ, դու ես
օրհնեալ յաւիտեանս․ ես լուէի ի հայ-
րենի գրոց, զի դու Տէր փոխեցեր յերկ-
րէ յերկինս զԵնովք, յապաշխարութենէ
ի կեանսն յաւիտենից․ ես լուայ ի հայ-
րենի գրոց, Տէր, եթէ դու զՆոյ ի ջուրցն
հեղեղէ ապրեցուցեր․ ես լուայ ի հայ-
րենի գրոց, Տէր, եթէ դու Աբրահա-
մու՝ առաջի արանցն իւրոց ի մէջ թա-
գաւորացն եսուր փառս․ ես լուայ ի
հայրենի գրոց, Տէր, եթէ դու զՅովնան
ի կէտ ձկանէն ապրեցուցեր․ ես լուայ ի
հայրենի իմոց գրոց, Տէր, եթէ դու
զերիս մանկունսն ի հնոցէ հրոյն փրկե-
ցեր, եւ զԴանիէլ ի գբոյ առիւծուցն
ապրեցուցեր․ ես լուայ ի հայրենի իմոց
գրոց, Տէր, եթէ դու զԵզեկիա արքայն
Հրէաստանի՝ մահուն դատապարտեալ՝
փրկեցեր, եւ ի կալ նորա յաղօթս առ
քեզ վասն կենաց իւրոց՝ ողորմեցար, եւ
շնորհեցեր եւ յաւելեր ի կեանս նորա
ամս հնգետասան․ ես լուայ ի հայրենի
իմոց գրոց, Տէր, եթէ դու ի խնդրեալն
ի քէն, Տէր, Աննայի աղօթիւք եւ
խնդրուածովք, զաւակ շնորհեցեր նմա
6 զմեծն Սամուէլ։ Եւ արդ այժմ մեք,
Տէր, մեղաք առաջի քո, եւ մատնե-
ցեր զմեզ ի ձեռս թշնամեաց մերոց,
7 Փոխանակ այնր զի փառաւորեցաք մեք
զաստուածս նոցա․ արդար ես դու Տէր։
8 Եւ այժմ ոչ շատացան ի ծառայելս մե-
րում նոցա, այլ եդին զձեռս իւրեանց
9 ի վերայ կռոց իւրեանց, Բառնալ զայն
զոր առհմանեաց բերանդ քո, եւ եղծա-
նել զժառանգութիւնս քո, եւ խնուլ
զբերանս որ օրհնեն զքեզ, եւ շիջու-
ցանել զփառս տան քո եւ զսեղանոյ
10 որոյ քո, Եւ բանալ զբերանս ազգաց
ի փառաւորել զոչինչ աստուածս իւր-
եանց, եւ փառաւորել զթագաւորս
11 մարմնաւորս յաւիտենիս այսորիկ։ Եւ
արդ, Տէր Աստուած, մի՛ մատներ զվի-
ճակ ժառանգութեան քո ի ձեռս այնո-
ցիկ որ ոչն իսկ են բնաւ, զի մի՛ ու-
րախութեամբ ցնծասցեն ի վերայ կոր-
ծանմանս մերոյ․ այլ դարձո զխորհուրդս
նոցա անդրէն ի նոսին, եւ զայն որ

յարուցեալ է ի վերայ մեր՝ խայտառակ-
12 եալ։ Յիշեա, Տէր, եւ մի՛ անտես առ-
նէր ի ժամանակի նեղութեան մերում։
Եւ զիս համարձակեցո որ Թագաւորդ
ես ամենայն թագաւորաց եւ Տէր տե-
13 րանց, Եւ տուր ինձ բան զեղեցիկ ի բե-
րան, որով պատմեցից չարեաց առաջի
թագաւորին. եւ դարձո զսիրտ նորա
յատելութիւն թշնամւոյն մերոյ՝ առ ի
կատարածի նմին եւ կամակցաց նորա.
14 Այլ զմեզ փրկեա բազկաւ քով,
եւ օգնեա ինձ միայնումս՝ որում ոչ ոք
15 է օգնական բայց ի քէն, Տէր։ Տէր,
դու զամենեցուն զսիրտս գիտես եւ
ճանաչես, եւ ես ատեցի զփառս անօ-
րինաց, եւ զարշեցեալ եմ յանկողնէ
անթլփատից, եւ յամենայն օտար
16 աստուածոց։ Դու գիտես, Տէր, զկա-
րիս իմ, զի զարշելի է ինձ նշան որ
է ի վերայ գլխոյ իմոյ. զարշիմ ի նմանէ
որպէս ի կապերտէ որ լինի ընդ օրի-
նաց կանանց, եւ ոչ զգենում զնա յա-
17 ժամ ի ներքս զարդարիմ։ Եւ ոչ կերաւ
աղախին քո ի սեղանոյ անտի Ամանայ,
եւ ոչ փառաւորեցի զկերակուրս թա-
գաւորին, եւ ոչ արբի զգինի սպանդից
18 նոցա. Եւ ոչ ուրախ եղեւ աղախին քո
յօրէն յայնմանէ՝ յորմէ հետէ մատեալ եմ
առ թագաւորն մինչեւ ցայժմ, բայց ի
քեզ, Տէր, Տէր Աստուած Աբրահամու։
19 Աստուած հզօր ի վերայ ամենեցունց,
լուր ձայնից անյուսացս, եւ փրկեա
զմեզ ի ձեռաց որ չարչարեն զմեզ, եւ
փրկեա զիս յերկիւղէ անտի զոր եր-
կնչիմս, եւ ապրեցո զժողովուրդ քո զԻս-
րայէլ։

## Գլ. ԺԵ

4 Եւ եղեւ յաւուրն երրորդի՝ իբրեւ դա-
դարեաց յաղօթիցն իւրոց, մերկացաւ
յիւրմէ զհանդերձ սգոյն, եւ զգեցաւ զծի-
5 րանին իւր, եւ եղեւ երեւելի յոյժ։ Եւ
կարդաց նա առ տեսուչն իւր Աստուած
եւ փրկիչն ամենայնի, եւ առ նա զեր-
6 կուս նաժիշտսն իւր զսիրելիս. Մին ու-
7 նէր զստորոտ զգեստու նորա ի վեր, Եւ
8 զմիւսովն արկեալ զձեռն իւր։ Եւ նա զա-
մօթի հարեալ երկնչէր վասն գեղոյ ման-
կութեան իւրոյ. եւ երեսք նորա
զուարթք առ ի սիրել, այլ սիրտ նորա
9 նեղեալ էր յահէ անտի։ Եւ եմուտ նա
ընդ ամենայն դրունս ապարանիցն, եւ
եկաց նա առաջի թագաւորին. եւ նա
նստէր յաթոռ թագաւորութեանն իւրոյ,
եւ զգեցեալ էր զպատմուճան փառացն
իւրոց, որ էր ընդելուզեալ ոսկւով եւ
մարգարտով եւ ականք պատուակա-
10 նօք, եւ էր ահաւոր յոյժ։ Եւ ի վեր
համբարձ զերեսս իւր, զի էին կար-
միրացեալ փառօք, եւ նայեցաւ. եւ զլորե-
ցաւ տիկինն, եւ փոխեաց նա զգոյն իւր,
եւ եղեւ նա իբրեւ զթալացեալ, եւ
խոնարհեցաւ ի գլուխ նաժշտին որ եր-
11 թայր առաջի նորա։ Եւ դարձոյց Աս-
տուած զոգի թագաւորին ի հեզութիւն,
եւ փութացեալ վազվաղակի էջ մեծաւ
երկիւղիւ յաթոռոյ անտի իւրմէ թա-
գաւորն, եւ առ զտիկինն ի վերայ գրկաց
իւրոց եւ կանգնեաց զնա, եւ աղաչէր
եւ մխիթարէր զնա բանիւք խաղաղու-
12 թեան, եւ ասէր ցնա, Զի՞ է քեզ, Ես-
թեր տիկին. ես եղբայր քո եմ, հա-
13 մարձակեաց, ոչ մեռանիս. Զի ի միա-
14 սին է իմ եւ քո հրամանս. Մատիր դու
եւ առ զգաւազանն զոսկի, եւ դիր ի
15 վերայ պարանոցի տիկնոջդ։ Եւ համ-
բուրեաց զնա, եւ ասէ, Խօսեաց ընդ
16 իս։ Եւ ասէ ցնա Եսթեր, Տեսի զքեզ,
տէր, իբրեւ զհրեշտակ Աստուծոյ, եւ
խռովեցաւ սիրտ իմ յահէ փառաց քոց.
17 Զի սքանչելի ես տէր իմ, եւ երեսք քո
18 լի են շնորհօք։ Եւ մինչդեռ խօսէր ընդ
նմա՝ զլորեցաւ միւսանգամ յահէ թա-
19 գաւորին։ Եւ թագաւորն խռովեալ էր
յոյժ եւ ամենայն ծառայք նորա։ Եւ
սպասաւորք թագաւորին աղաչէին զտի-
կինն։ Եւ ասէ թագաւորն, Զի՞նչ կա-
միս, Եսթեր, եւ զի՞նչ են աղաչանքդ
քո. որպէս ասեմ քեզ, եթէ խնդրես-
ցես մինչեւ ի կէս թագաւորութեանս
իմոյ, տաց քեզ։"

## Գլ. Ե

4 [1]Եւ ասէ Եսթեր, Օրս իմ այս նշանա-

[1] Յէբր. (1) Եւ եղեւ յաւուրն երրորդի, և զգեցաւ Եսթեր զհանդերձս թագաւորութեան, եւ եկաց ի գաւթի անդ ներքնում յանդիման տան թագաւորին. եւ թագաւորն նստէր ի վերայ աթոռոյ թագաւորութեան իւրոյ յանդիման դրան տանն։ (2) Եւ եղեւ իբրեւ ետես արքայ զԵսթեր տիկին զի կայր ի գաւթին, եգիտ նա շնորհս յաչս նորա, եւ ձգեաց թագաւորն առ Եսթեր զգաւազանն ոսկի զոր ունէր ի ձեռին իւրում, եւ մատեաւ Եսթեր եւ մերձեցաւ ի գլուխ գաւազանին։ (3) Եւ ասէ ցնա արքայ,

ւոր է՞. եթէ կամք իցեն արքայի, եկեսցես դու եւ Համան ի կոչունս իմ զոր
5 առնելոց եմ այսօր։ Եւ ասէ թագաւորն,
Կոչեցէք փաղփաղակի զՀաման, եւ կատարեսցուք զբանն Եսթերայ։ Եկին երկոքեան նոքա ի կոչունս զոր արար Եսթեր։
6 Եւ մինչդեռ ըմպէին զգինի, ասէ արքայն ցԵսթեր, [1]Զի՞նչ կամիս, տիկին Եսթեր, տաց քեզ զոր ինչ եւ խնդ-
7 րեսցես՞։ Եւ ասէ Եսթեր, Աղաչանք
8 իմ եւ խնդրուածք իմ այս են, Եթէ
գտի ես շնորհս առաջի [2]արքայի, եկեսցէ արքայ եւ Համան ի կոչունս զոր առնեմ [3]ձեզ վաղիւ միւսանգամ՞։
9 Եւ ել Համան [4]յերեսաց արքայի՞ ուրախութեամբ մեծաւ եւ զուարթութեամբ. եւ իբրեւ եսես Համան զՄուրթքէ [5]զայրն Հրեայ ի տան թագաւորին՝
10 բարկացաւ յոյժ։ Եւ՞ եմուտ ի տուն իւր, եւ կոչեաց զսիրելիս իւր, եւ
11 Զովսարրա զկին իւր։ Եւ [6]եցոյց նոցա զմեծութիւն եւ զփառսն իւր զոր ետ նմա թագաւորն, եւ որպէս արար զնա առաջին ի թագաւորութեանն իւրում՞։
12 Եւ ասէ Համան, Ոչ կոչեաց տիկինն Եսթեր ի կոչունս իւր ընդ արքայի զոք՝ բայց յինէն, եւ զարձեալ առ վաղիւ եւս
13 հրաւիրեաց [7]զիս։ Եւ այդ այս ոչ թուի ինձ հաճոյ, յորժամ տեսանեմ զՄուրթքէ՝
14 զայր Հրեայ ի տան թագաւորին։ Եւ ասէ ցնա Զովսարրա կինն իւր եւ սիրելիքն իւր, Հրաման տուր հատանել քեզ փայտ մի յիսուն կանգուն, եւ ընդ առաւօտն ասասցես արքայի եւ կախեսցի Մուրթքէ զփայտէն. եւ դու

Զի՞ է քեզ, Եսթեր տիկին, եւ զի՞նչ է խնդրուած քո. մինչեւ ցկէս թագաւորութեանս տացի քեզ։ (4) Եւ ասէ Եսթեր,
[1]Եբր. Զի՞նչ են աղաչանք քո՝ տացի քեզ. եւ զի՞նչ խնդրուած քո՝ մինչեւ ի կէս թագաւորութեանս եղիցի [2]Եբր. արքայի, եւ եթէ բարւոք թուի արքայի տալ զաղաչանս իմ եւ առնել զխնդրուածս իմ [3]Եբր. ձեզ, եւ վաղիւ արարից ըստ բանին արքայի [4]Եբր. յաւուր յայնմիկ [5]Եբր. ի դրան թագաւորին, զի ոչ յարեաւ եւ ոչ շարժեցաւ վասն նորա, լցաւ Համան ի վերայ Մուրթքէի բարկութեամբ։ (10) Եւ արար բուռն անձին իւրում Համան, եւ [6]Եբր. թուեաց նոցա Համան զփառս մեծութեան իւրոյ եւ զբազմութիւն որդւոց իւրոց, եւ զամենայն որովք մեծացուցեալ էր զնա թագաւորն, եւ զի բարձրացուցեալ էր զնա ի վեր քան զիշխանս եւ զծառայս արքայի [7]Եբր. զիս ընդ արքայի

մտանիցես ի կոչունս հանդերձ արքայիւ, եւ ուրախ լինիցիս ընդ նմա։ Եւ հաճոյ թուեցաւ Համանայ բանն, եւ պատրաստեցին զփայտն։

ԳԼ. Զ

1 Եւ [8]Տէր Աստուած մերժեաց զքուն՞ յարքայէ զգիշերն զայն. եւ ասաց [9]ցդպրապետն իւր՞ բերել առաջի իւր զգիր
2 [10]յիշատակին եւ կարդալ։ Եւ եգիտ նա զյիշատակն զոր գրեալ էր վասն Մուրթքէի, թէ որպէս պատմեաց [11]վասն երկոցունց ներքինեացն նորա, յորժամ պահէին զապարանս թագաւորին, եւ կամէին սպանանել զարքայ [12]Արտաշէս։
3 Եւ ասէ թագաւորն, Եւ զի՞նչ շնորհս եւ կամ փառս տուաք Մուրթքէի. եւ ասեն սպասաւորքն արքայի, Զարարեր եւ ոչ ինչ նմա [9]յորժամ հասեր ի վերայ խնամոց հաւատարմութեան նորա առ քեզ։ Եւ ընդ առաւօտն եկեալ ի գաւիթ
4 թագաւորին՞։ Եւ ասէ արքայ, Ո՞վ է ի գաւիթս։ Եւ Համան եկն եմուտ՝ հրաման առնուլ ի թագաւորէն, զի կախեսցէ զՄուրթքէ զփայտէն զոր պատրաստեաց։
5 Եւ ասեն սպասաւորքն արքայի, Ահաւասիկ Համան արտաքոյ է. եւ ասէ արքայ, Կոչեսցի ի ներքս։
6 Եւ ասէ թագաւորն ցՀաման, Զի՞նչ արարից ես առն զոր ես կամիմ փառաւորել. եւ խորհեցաւ Համան, եւ ասէ ի միտս իւր, Զո՞վ կամի արքայ փա-
7 ռաւորել եթէ ոչ զիս։ Եւ ասէ ցարքայ, Զայրն զոր արքայ կամի փառաւորել,
8 Բերցեն զպատմուճանն զարքունի, եւ զերիվարն յորում արքայ հեծանէր, [13]եւ տացեն առն այնմիկ սիրելւոյն արքայի
9 ի փառաւորաց անտի. Եւ՞ զգեցուսցեն զպատմուճանն առն այնմիկ զոր արքայն [14]սիրէ, եւ հեծուսցեն զնա յերիվարն արքունի, եւ քարոզ կարդասցի ընդ հրապարակս քաղաքիս, եւ ասասցէ, Այսպէս եղիցի ամենայն առն զոր ար-
10 քայ փառաւորէ։ Եւ ասէ արքայ ցՀա-
ման, [15]Բարւոք խօսեցար. զայդ՞ արա-

[8]Եբր. մերժեցաւ քուն [9]Յեբր. [illegible] [10]Եբր. յիշատակաց [11]Եբր. վասն Բիգթանայ եւ Թարեսի [12]Եբր. Ասուերոս [13]Եբր. եւ որոյ տուեալ է պսակ թագաւորութեան ի գլուխ նորա։ (9) Եւ տացի պատմուճանն եւ երիվարն ի ձեռն առն յիշխանաց արքայի ազատաց եւ [14]Եբր. կամի մեծարել [15]Եբր. Փութա, առ զպատմուճանն եւ զերիվարն, որպէս խօսեցարդ՝

ցես Մուրթքէի առն Հրէի ¹խնամակալի
ի դրան իմում", եւ մի՛ վրիպեսցի բան
մի ի բանից քոց զոր խօսեցար ։
11 Եւ առ Համան զպատմուճանն եւ
զերիվարն արքունի, եւ զգեցոյց զՄուրթ-
քէ, եւ հեծոյց զնա յերիվարն, եւ անց
նա ընդ փողոցս քաղաքին. եւ քարոզն
աղաղակէր եւ ասէր, Այսպէս լիցի ա-
մենայն մարդոյ զոր կամիցի արքայ
12 փառաւորել ։ Եւ դարձաւ Մուրթքէ յա-
պարանս արքունի, եւ Համան գնաց ի
տուն իւր գլխակոր՝ ի տրտմութեան։
13 Եւ պատմեաց Համան որ զինչ անց ընդ
նա Զաւաքրայի կնոջ իւրում եւ սի-
րելեաց իւրոց ։ Եւ ասեն ցնա ²սիրելիքն
եւ կին իւր, Եթէ յազգէ Հրէից է
Մուրթքէ եւ եղեւ իշխան, հնազանդեա
նմա. զի ոչ կարես դու նմա չար հա-
տուցանել, քանզի Տէր Աստուած ընդ
14 նմա է, եւ նա մեծացոյց զնա"։ Եւ մինչ-
դեռ նոքա խօսէին, ³եկին երկու ներ-
քինիքն կոչել զՀամանն ի ճաշ տիկնոջն"

ԳԼ. Է

1 Եւ եմուտ թագաւորն եւ Համան ⁴ի
2 գինեխրախուս տիկնոջն ։ Եւ ասէ արքայ
ցԵսթեր յաւուրն երկրորդի մինչդեռ ըմ-
պէին զգինի, Զի՞ է քեզ, Եսթեր տիկին,
եւ զի՞նչ է խնդրուածք քո եւ կամ ա-
ղաչանք. եղիցի քեզ մինչեւ ի կէս
թագաւորութեանս իմոյ ։
3 Եւ պատասխանի ետ Եսթեր եւ ասէ,
Եթէ գտի շնորհս առաջի քո, արքայ,
⁵տացի անձն մի խնդրոյս իմում, եւ բան
աղաչանացս իմոց ընդունելի լիցի".
4 Վասն զի վաճառեցաք ես եւ ժողովուրդ
իմ ի կորուստ եւ ի ծառայութիւն եւ ի
յափշտակութիւն, ⁶մեք եւ որդիք մեր,
եւ ես ոչ հաւատայի. արդ ոչ է առն
բանսարկուի արժան ի տան թագաւորի
լինել ։"

5 Եւ ասէ ⁷արքայն, Ո՞ր է" որ իշխեաց
6 առնել զայս գործ ։ Եւ ասէ Եսթեր,
Այրս թշնամի Համան՝ որ չարս է, սա
արդ. եւ Համան զահի հարեալ խռո-
վեցաւ յոյժ յարքայէ եւ ի տիկնոջէն ։
7 Եւ յարեաւ ⁸թագաւորն ի ճաշոյ անտի,
եւ եմուտ ի ծաղկոցն արքունի. եւ
Համան ⁹կամէր հրաժարել ի տիկնոջէն,
8 քանզի էր յերկիւղի մեծի"։ Եւ դարձաւ
թագաւորն ի ծաղկոցէ ¹⁰անտի, եւ ետես
զՀամանն զի կայր անկեալ առաջի գա-
հոյից տիկնոջն՝ ¹¹եւ աղաչէր զնա վասն
փրկութեան իւրոյ." եւ ասէ թագաւորն,
Արդ յայդ չափ հասեր, զի կամիս զկին
իմ բռնադատել ի տան իմում. ¹²եւ Հա-
ման իբրեւ լուաւ, զահի զամօթի հար-
9 եալ անկաւ ի վերայ երեսաց իւրոց"։ Եւ
ասէ Բուգաթան՝ մի ի ներքինեաց անտի
ցարքայ, Ահա Համան փայտ մի
կազմեաց Մուրթքէի սիրելւոյ արքայի,
եւ կանգնեաց զնա ի տան իւրում յի-
սուն կանգնեան ։ Եւ ասէ թագաւորն,
10 Խաչեսցի ի վերայ նորա ։ Եւ կախեցին
զՀամանն զփայտէն զոր պատրաստեաց
Մուրթքէի. եւ ապա թագաւորն դա-
դարեաց ի բարկութենէ իւրմէ ։

ԳԼ. Ը

1 Եւ յայնմ աւուր պարգեւեաց թագաւորն
Եսթերայ ¹³զգանձն Համանայ քսուի.
եւ զՄուրթքէ կոչեցեալ" թագաւորին,
քանզի պատմեաց նմա Եսթեր եթէ ազ-
2 գական իմ է ։ Եւ առ թագաւորն զմա-
տանին զոր եհան ի Համանայ, եւ ետ
զնա Մուրթքէի, եւ կացոյց Եսթեր
զՄուրթքէ ի վերայ ամենայն ընչից
Համանայ ։
3 Եւ յաւել եւս խօսել ընդ արքայի, եւ
անկաւ առաջի ոտից նորա, եւ ¹⁴աղաչէր՝
զի մի՛ մինչեւ ի վախճան լիցի պատու-
հասն ի վերայ Հրէիցն զոր հասոյց Համան"։
4 Եւ ձգեաց արքայ առ Եսթեր զգաւա-

¹Եբր. որ նստի ի դրան արքային ²Եբր. իմաստունք նորա եւ Զերէս (Զովսարրա) կին նորա, Եթէ ի զաւակէ Հրէից է Մուրթքէ, որոյ սկսար դու անկանել առաջի նորա, ոչ յաղթեսցես նմա, այլ անկանելով անկցիս առաջի նորա ³Եբր. եկին ներքինիք թագաւորին եւ փութացուցին տանել զՀամանն ի կոչունսն զոր արարեալ էր Եսթերայ ⁴Եբր. ըմպել ընդ Եսթերայ ⁵Եբր. եւ եթէ հաճոյ թուեսցի արքային, տացի ինձ անձն իմ ի խնդրուածս իմ, եւ ժողովուրդ իմ յաղաչանս իմ ⁶Եբր. եւ եթէ վաճառէաք ի ծառայս եւ յաղախնայս, լռէի. թէպէտեւ բանսարկուն չէր բաւական առնել հատուցումն վնասու թագաւորին ։

⁷Եբր. արքայ Ասուերոս ցԵսթեր տիկին, Ո՞վ իցէ այն, եւ ո՞ւր իցէ նա ⁸Եբր. թագաւորն բարկութեամբ ⁹Եբր. եկաց աղաչել վասն անձին իւրոյ զԵսթեր տիկին. զի ետես եթէ վճարեալ էր վասն նորա յարքայէ ¹⁰Եբր. անտի ի տուն խրախութեան գինւոյն ¹¹Յեբր. պակասէ ¹²Եբր. իբրեւ ել բանս այս ի բերանոյ թագաւորին, ծածկեցին զերեսս Համանայ ¹³Եբր. զտունն Համանայ քսուի Հրէից. և եկն Մուրթքէ առաջի ¹⁴Եբր. լայր եւ աղաչէր զնա անցուցանել զչարիսն Համանայ Ագագացւոյ, եւ զխորհուրդն զոր խորհեցաւ նա ի վերայ Հրէիցն

զանն ոսկի. եւ յարեաւ Եսթեր [1]երթալ
5 ի սենեակն արքայի։ Եւ ասէ Եսթեր,
Եթէ կամք իցեն քեզ եւ գտեալ է իմ
շնորհս առաջի քո, [2]առաքեսցէ արքայ
հրեշտակս եւ դարձուսցէ զհրովարտակսն
որ գրեցանն ի Համանայ կորուսանել
զՀրեայսն որք են ի քում թագաւորու-
6 թեանդ։ Եւ զիա՞րդ կարիցեմ ես տե-
սանել զչարիս ժողովրդեան իմոյ, եւ
կամ զիա՞րդ կարացից [3]ապրել ես ի
բնակչաց հայրենի գաւառին իմոյ"։
7 Եւ ասէ թագաւորն [4]ցԵսթեր, Իսկ
եթէ զամենայն ինչս եւ զստացուածս
Համանայ ետու շնորհեցի քեզ, եւ զնա
կախեցին զփայտէ, զի ձեռն էարկ նա ի
Հրեայսն, [5]զի՞նչ այլ եւս ինչ խնդրես"։
8 Գրեցէք արդ [6]դուք հրամանաւ բանի
իմոյ որպէս կամք իցեն ձեզ, եւ կնքես-
ցի մատանեաւս իմով. զի [7]որչափ եւ
գրէք՝ իմ արքայի հրաման առեալ. զի
մի՛ ոք գտցի զհակառակ այնց հրամանաց"։
9 Եւ կոչեցին [8]զդպիրսն յառաջնում ա-
ւուրն յամսեանն Նիսան՝ որ է Ադեր,
ի քսաներորդի յերրորդի ամսի". եւ գրե-
ցաւ՝ որպէս եւ ետ հրաման [9]աշխար-
համար զօրացն. որք մեծամեծ իշխանքն
եւ կուսակալքն էին ի գաւառս գաւառս,
նախարարացն, եւ իշխանաց նախարա-
րացն", ի Հնդկաց մինչեւ յԵթովպիացիս՝
հարիւր քսան եւ եւթն կուսակալացն,
ըստ գաւառաց գաւառաց յիւրաքան-
10 չիւր [10]լեզուս նոցա, Հրամանաւ թա-
գաւորին. եւ կնքեցաւ մատանեաւ նո-
րա։ Եւ առաքեցին զհրովարտակսն ի
11 ձեռն հրեշտակաց, Որպէս զի կացցեն
Հրեայք ազգ եւ անպարտք իւրեանց
օրինօք յամենայն քաղաքի. օգնականք
եւ թիկունք լինել առ ի հատուցանել
նոցա զփոխարէն թշնամեաց իւրեանց՝
12 որպէս եւ կամիցին՝ Յաւուր միում ընդ
ամենայն անդիս թագաւորութեան ի-
մում, յաւուրն երեքտասաներորդի ամ-
սոյն Ադարայ։"

ԳԼ. ԺԶ

1 [11]Եւ այս էր պատճէն հրովարտակին զոր
կնքեալ էր մատանեաւ թագաւորին.
Թագաւոր մեծ Արտաշէս, ձեզ՝ որ էք
ի Հնդկաց կողմանց եւ յԵթովպացւոց
հարիւր քսան եւ եւթն գաւառաց, նա-
խարարացդ եւ իշխանացդ, եւ որ ի
միում մտի եւ ի խորհրդեան միում
2 էք, ողջոյն։ Բազումս բազում անգամ
ի բարերար քաղցրութեանց առատ առէպ
առէպ պատուեալք՝ աւելի եւս եւ մե-
3 ծամեծ խորհուրդս խորհեցան։ Եւ ոչ
միայն զմեր հնազանդեալսն խնդրեն
չարչարել, այլ եւ ոչ իւրեանց յանյղդ-
նութեամբն՝ եւ մեծութեանց կարեն համ-
բերել, եւ յիւրեանց բարերարսն ձեռ-
4 նարկել մենքենայեն։ Եւ զգովութիւնս
ոչ միայն ի մարդկանէ աստի բառնան
անտի, այլ եւ ի չմարթնոցն զովու-
թիւնս բարձրացեալ յղփացեալ խնդրեն.
ոչ գիտեն որոց ամենայնի տեսուչ յա-
ւէժ Աստուած է, եւ աստուածութիւն իմն
չարութեան համարին փախչել ի դա-
5 տաստանէն։ Բազում անգամ զբազումս
որք յիշխանութեան կարգեալ են, որոց
հաւատարմութեամբ զգործ ի ձեռն առ-
եալ է, հանդիստ եւ մխիթարութիւն
անձանց համարին առ ի հեղուլ զարիւն
6 անբիծ։ Վասն որոյ կրեաց իսկ զարժան
պատուհասն, չարակամութեամբ ստու-
թեան սասնից խորհելոյ՝ ամբաստանու-
թիւն մատուցանել մեզ վասն այսորիկ
7 որք ի մէնջն պատուեցան։ Այլ արդ

[1]Եբր. եւ եկաց առաջի [2]Եբր. եւ ուղիղ է
բանն առաջի արքայի, եւ հաճոյ եղէ յաչս
նորա, գրեսցի դարձուցանել զհրովարտակս
խորհրդոյն Համանայ որդւոյ Ամադաթայ Ագա-
գացւոյ, զորս գրեաց նա [3]Եբր. տեսանել
զկորուստ ազգականաց իմոց [4]Եբր. ցԵսթեր
տիկին եւ ցՄուրթքէ Հրեայ, Ահա զտուն
[5]Յեբր. պակաս [6]Եբր. դուք վասն Հրէից [7]Եբր.
գիր որ գրի յանուն արքայի եւ կնքի մատան-
եաւ արքայի՝ ոչ դարձցի յետս [8]Եբր. զդպիրս
թագաւորին ի ժամանակին յայնմիկ յամ-
սեանն երրորդի որ է ամիսն Սիւան ի քսա-
ներորդումն եւ յերրորդումն նորին ամսոյ [9]Եբր.
Մուրթքէ առ Հրեայս եւ առ կուսակալս եւ
զօրավարս եւ իշխանս գաւառաց [10]Եբր.
իւրով գրով. եւ ըստ ազգաց ազգաց
յիւրաքանչիւր լեզուս նոցա, և առ Հրեայս
ըստ գրոյ նոցա եւ ըստ լեզուի նոցա։ (10) Եւ
գրեաց յանուն արքային Ասուերոսի եւ կնքեաց
մատանեաւ արքային, եւ առաքեաց զհրովար-
տակսն ի ձեռն սուրհանդակաց հեծելոց յերի-
վարս, ի նժոյգս, ի ջորիս մորուկս մատակ
ձիոց, (11) Զորս ետ թագաւորն Հրէից, որ էին
ի քաղաքս քաղաքս, ժողովել եւ կալ վասն
անձանց իւրեանց, կոտորել, սատակել, կո-
րուսանել զամենայն զօրութիւն ժողովրդեան
եւ գաւառի, որ նեղիցեն զնոսա, զմանկունս
եւ զկանայս, եւ զաւար նոցա յափշտակել, (12)
Ի միում աւուր յամենայն գաւառս արքային
Ասուերոսի, յերեքտասաներորդումն ամսոյն եր-
կոտասաներորդի, որ է Ադար ամիս։
[11]Յեբր. պակաս այս ճիւղն։

զգուշանալ արժան է, ոչ այնչափ միայն՝
որչափ եւ յառաջնում նուագին ուսու-
ցաք ձեզ առնել. որչափ եւ զննեցան
ձեզ առանց սրբութեան, որ եղեւ այ-
նոցիկ որք անարժանութեամբքն զօրա-
ցեալ էին՝ ժառանգութեամբ իւրեանց։
8 Արդ հայեցեալ ձեր ի թագաւորութիւնս,
առանց խռովութեան ամենայն մարդ-
կան շնորհեցաք կեալ խաղաղութեամբ։
9 Արդ արարէք զդարձ փոխարինին ի նոյն.
եւ որ առաջին հրամանն էր՝ այն ի բաց
մերժեսցի, եւ հեզութեամբ եւ խաղա-
10 ղութեամբ ընդ առաջ ելանել։ Եւ մի
որպէս Համանն Ամադաթեանց Մակե-
դովնացի, ճշմարտութեանց օտար լեալ
ի զաւակէն Պարսից, եւ յոյժ ատեցեալ
եւ մերժեալ ի մերմէ քաղցրութենէ
11 առաւ, Եւ օտարացեալ՝ զոր ունիմք առ
ամենայն ազգս մարդասիրութիւնս. այն-
չափ եւս՝ զի եւ կոչեցաւ մեր աթո-
ռակից, որում երկիր պագանէին ամե-
նեքեան որք են ընդ մերով իշխանու-
թեամբս, զոր յերկրորդ աթոռ իմում
12 նստուցեալ պատուեցաք։ Եւ ոչ համ-
բերեաց նա իւրում ամբարտաւանու-
թեանն, մեքենայել ջանացաւ՝ յիշխա-
նութենէ առաւ զմեզ ի բաց մերժել եւ
13 յոգւոց առաւ մերոց, Եւ զմեր փրկիչն
եւ վերախատաւոր՝ զՄուրթքէ, եւ չքնաղ
եւ զանարատ՝ զհաւասար թագաւորու-
թեանս իմոյ զԵսթեր տիկնաց տիկին,
ամենայն ազգաւն իւրեանց հանդերձ՝
բազում զուր ի նանիր մեքենաս ի վերայ
եդեալ առանց պատճառի, խնդրեաց
14 զատա ի կորուստ. Զի նա այսու օրի-
նակաւ խորհեցաւ առնել զիշխանու-
թիւնս Պարսից յանապատ աւերակ, եւ
ի Մակեդոնացիս անդրէն դարձուցանել։
15 Այլ մեք, ի բազմահնար սատակչէ յայն-
մանէ որք մատնեցան ի կորուստ Հրէ-
այքս, տեսանեմք զի ոչ ինչ գործք
չարութեան ի սոսա գտանին. եւ ար-
16 դար օրինաց վարին։ Եւ են իսկ սոքա
որդիք Բարձրելոյն մեծի կենդանւոյն
Աստուծոյ որ ուղղէ զմեր եւ զազգիս
մերոյ զթագաւորութիւնս յիւրմէ բա-
17 րեսէր առատութենէն։ Եւ արդ բարւոք
արարէք զի ոչ ինչ ձեռնամուխ եղէք
ըստ հրամանի գրոյ հրովարտակին Հա-
18 մանայ՝ որ առաքեցաւ առ ձեզ. վասն
զի եւ նա ինքն զայս յինքենէ գոր-
ծեաց. մերձ ի դրունս Սուսացւոց քա-
ղաքիս ամենայն ընտանեօք իւրովք
հանդերձ ի փայտ կախեալ է. զարժանի
զվրիժուց հատուցումն անդրէն յանձն
իւր ընկալեալ յամենակալէն Աստուծոյ,
որ հատոյց նմա վաղվաղակի զդատաս-
19 տանն։ Եւ զպատճէն հրովարտակիս
այսորիկ յառաջ հանեալ՝ եդեալ եւ տա-
րածեալ ամենայն զգուշութեամբ, եթէ
20 Հրէից վարել զիւրեանց օրէնսն։ Արդ
քաջալերեսցին նոքա. զի որպէս ի ժա-
մանակի նեղութեանն ստիպէին զնոսա
չարչարել, հատուսցեն զհատուցումն ի
թշնամիս իւրեանց, յերկոտասաներորդ
եւ յերեքտասաներորդ ամսեանն Ադար՝
21 ի նմին աւուր. Զի զայս իսկ ամենա-
զօրն Աստուած փոխանակ սատակելոյ
ընտրեալ ազգին՝ արար նոցա ուրա-
22 խութիւն։ Եւ դուք այժմ ի կարգս ձեր
եւ ի տօնս տարեկանաց ձերոց, եւ յա-
ւուր նշանաւորի ուրախութիւնս արաս-
23 ջիք. Զի որպէս ցայժմ, եւ արդ զկնի
այսորիկ փրկութիւն եղիցի մեզ եւ
վաստակաւորաց մերոց Պարսկաց. եւ
որք ի մեր վերայ զխորհուրդ մահու
խորհէին՝ նոցա յիշատակ կորստեան։
24 Ամենայն քաղաքք եւ ամենայն գաւառք
որ ոչ առնիցեն ըստ բանից մերոց այ-
սոցիկ՝ սրով եւ հրով եւ բարկութեամբ
մաշեսցին, ոչ միայն ի մարդկանէ ա-
նապատ լիցի, այլ եւ գազանք երկրի
եւ թռչունք երկնից մինչեւ յաւիտեան
ի բաց մերժեալք ընկեսցին։"

## Գլ. Ը

13 [1]Եւ պատճէն հրովարտակացն ցուցեալ
կարգեալ լինի առաջի ամենայն աչաց՝
յիմում թագաւորութեանս. եւ որ պատ-
րաստեալ հանդերձեալ էին կորուսանել
զՀրէայսդ՝ յաւուր յայսմիկ կորուսանել
14 զթշնամիս զոյա։ Ողջ լերուք։ Եւ

---

[1] Եբր. Պատճէն հրովարտակին. տալ պատուէր յամենայն գաւառս, յայտ առնել ամենայն ժողովրդոց, զի կացցեն Հրեայքն պատրաստ յաւուրն յայնմիկ առ ի խնդրելոյ վրէժս ի թշնամեաց իւրեանց։ (14) Սուրհանդակքն հեծեալք ի նժոյգս, ի ջորիս, ելին փութով, տագնապեալք ի հրամանէ թագաւորին, և հրովարտակն տուաւ ի Շուշան քաղաքի։

(15) Եւ Մուրթքէ ել յերեսաց թագաւորին ի հանդերձ արքունի ի կապուտակ և ի սպիտակ բեհեզոյ եւ ի թագ մեծ ոսկեղէն, եւ պրկեալ բեհեզ եւ ծիրանի, եւ քաղաքն Շուշան ցնծացաւ եւ ուրախ եղեւ։

հրեշտակքն ելին փութով կատարել որ
ի թագաւորէն կարգեալ էր. եւ գրե-
ցաւ հրամանն եւ եդաւ ի Սիւսիս քա-
ղաքի. եւ յաւուրսն յայնոսիկ յորժամ
15 եղեւ այս, Եւ Մուրթքէ ել, եւ զգեց-
եալ էր զպատմուճանն զարքունի, եւ
պսակ ունէր ոսկի եւ թագ ի բեհեզոյ
եւ ի ծիրանւոյ. եւ տեսին որ ի Սիւսիս
քաղաքին էին, եւ ուրախ եղեն յոյժ՟։
16 Եւ Հրէիցն լոյս մեծ ծագեաց եւ ու-
17 րախութիւն [1]յոյժ։ Ցամենայն քաղաքի
եւ ի գաւառս՝ ուր եւ ընթեռնուին զհրա-
մանս արքունի՝ խնդութիւն եւ ուրա-
խութիւն լինէր [2]նոցա. եւ բազումք ի
հեթանոսաց դաւանէին ի Հրէութիւն
անդր, [3]եւ թլփատէին վասն ահին Հրէից՟։

Գլ. Թ

1 [4]Զի յերկոտասաներորդ ամսեան եւ յե-
րեքտասաներորդ աւուրն որ է Ադար,
եկն եհաս հրովարտակն որ գրեալ էր
յարքունուստ, ի նմին աւուր կորնչէին
որ միանգամ զխմագարծք լինէին Հրէ-
2 իցն։ Եւ ոչ ոք էր որ ընդդէմ պատնայր
նոցա ամենեւին. քանզի զահի հարան
3 ի նոցանէն։ Զի իշխանքն՝ որ ի վերայ
նախարարացն նոցա կացեալ էին, եւ
կուսակալք եւ արքունի դպրապետք՝
պատուէին զՀրէայսն, զի ահն Մուրթ-
4 քէի կայր ի վերայ նոցա. Քանզի հրա-
ման տուեալ էր հրովարտակաւ թագա-
ւորին՝ անուանել զնա ընդ ամենայն
6 թագաւորութիւնն իւր։ Եւ ի Սիւսիս
քաղաքի կոտորեցին Հրեայքն արս իբրեւ
7 հինգ հարիւր. Զփարսանն եւ զՆեսաէն
8 եւ զԴոլփոն եւ զՓաղգա Եւ զՓարդա-
թա եւ զԲարեա եւ զՍարաբաքա եւ
9 զՄարմասիս Եւ զԱրուփէոն եւ զԱրսէոն
10 եւ զԱրբութեթան, Զորդիսն Համանայ
որդւոյն Ամադաթայ որդւոյ Բերգեայ՝
11 թշնամւոյն Հրէից։ Եւ յափշտակեցին ի
նմին աւուր եւ մատուցին զթիւն ար-
քայի զկորուսելոյն ի Սիւսիս քաղաքի։
12 Եւ ասէ արքայ ցԵսթեր, Կորուսին
Հրեայքն ի Սիւսիս քաղաքի արս հինգ
հարեւր, եւ շուրջ զքաղաքաւն որչափ
եւս առաւել յոյժ կարծես. արդ զի՞նչ
13 եւս կամիս՝ զի արարից քեզ։ Եւ ասէ
ցարքայ Եսթեր, Տացէ հրաման արքայ
Հրէիցն սոյնպէս առ վաղիւ՝ զի զորդիսն
14 Համանայ կախեսցեն։ Եւ ետ հրաման
առնել սոյնպէս. եւ հան արտաքս առ
Հրեայսն որ ի քաղաքին էին՝ զմարմինս
15 որդւոյն Համանայ հանել ի փայտ։ Եւ
ժողովեցան Հրեայքն ի Սիւսիս, յաւուրն
չորեքտասաներորդի Ադարայ, եւ կոտո-
րեցին արս երեք հարեւր. եւ ոչ ինչ
16 յափշտակեցին։ Եւ որ այլքն էին ի
Հրէից մնալ որ ընդ թագաւորութեամբ

[1] Եբր. եւ խնդութիւն եւ պատիւ [2] Եբր. Հրէից. խրախութիւն եւ օր բարի [3] Եբր. զի անկաւ ահն Հրէից ի վերայ նոցա

[4] Գլուխ Թ և Ժ թարգմանեալ յԵբրայականէն. զի Եբր. [illegible] (1) Եւ յերկոտասաներորդ ամսեանն որ է ամիսն Ադար, յերեքտասաներորդ աւուրն յորում եհաս բան թագաւորին եւ հրովարտակ նորա զի կատարեսցի, ի նմին աւուր յորում յուսային թշնամիքն Հրէից տիրել նոցա, եւ եղեւ ընդ հակառակն, զի Հրեայք տիրեցին ատելեաց իւրեանց։ (2) Ժողովեցան Հրեայքն ի քաղաքս իւրեանց յամենայն գաւառս Ասուերոսի արքայի մխել ձեռս յորս խնդրէին չարիս նոցա, եւ ոչ ոք եկաց ընդդէմ նոցա, զի ահ նոցա անկաւ ի վերայ ամենայն ժողովրդոց։ (3) Եւ ամենայն իշխանք գաւառաց եւ նախարարք եւ կուսակալք եւ գործակալք արքայի էին ձեռնտու Հրէից, զի անկաւ ահն Մուրթքէի ի վերայ նոցա։ (4) Զի մեծ էր Մուրթքէ ի տան թագաւորին, եւ համբաւ նորա հռչակէր ընդ ամենայն գաւառս, քանզի այրն Մուրթքէ երթայր եւ մեծանայր։ (5) Եւ հարին Հրեայքն յամենայն թշնամիս իւրեանց հարուածս սրոյ. եւ սպանմամբ եւ կորստեամբ. եւ արարին որոց ատէինն վնաս ըստ կամաց իւրեանց։ (6) Եւ ի Շուշան քաղաքի սպանին Հրեայքն եւ կորուսին արս հինգհարեւր։ (7) Այլ եւ զՓարսանդաթա եւ զԴաղփոն եւ զԱսփաթա, (8) Եւ զՓորաթա եւ զԱդալիա և զԱրիդաթա, (9) Եւ զՓարմաշթա եւ զԱրիսայի և զԱրիդայի եւ զՎայեզաթա, (10) Զտասն որդիսն Համանայ որդւոյ Ամադաթայ թշնամւոյն Հրէից սպանին, եւ յաւար անդր ոչ մխեցին ձեռս։ (11) Ի նմին աւուր մատուցին զթիւն արքայի զկորուսելոցն ի Շուշան քաղաքի։

(12) Եւ ասէ արքայ ցԵսթեր տիկին, Ի Շուշան քաղաքի սպանին Հրեայքն եւ կորուսին արս հինգ հարեւր, եւ զտասն որդիսն Համանայ. յայլ եւս գաւառս արքայի զի՞նչ արարին. եւ զի՞նչ է խնդրուած քո, եւ տացի քեզ. և զի՞նչ են աղաչանք քո այլ եւս, եւ կատարեսցի։ (13) Եւ ասէ Եսթեր, Եթէ բարւոք թուեսցի արքայի, տացի հրաման վաղիւ եւս Հրէից որ ի Շուշան՝ առնել ըստ հրամանին այսր աւուր, եւ տասն որդիքն Համանայ կախեսցին զփայտէ։ (14) Եւ ասէ արքայ առնել այնպէս. եւ տուաւ հրովարտակ ի Շուշան. եւ տասն որդիք Համանայ կախեցան։ (15) Եւ ժողովեցան Հրեայքն որ ի Շուշան ի չորեքտասաներորդում աւուրն ամսեանն Ադարայ եւս, եւ սպանին ի Շուշան արս երեքհարեւր, եւ յաւար անդր ոչ մխեցին ձեռս։ (16) Եւ մնացորդք Հրէիցն որ ի գաւառս թագաւորին՝ ժողովեցան եւ կացին վասն անձանց իւրեանց, և հանգեան ի թշնամ-

նոքա էին՝ ժողովեցան եւ անձանց իւր-
եանց օգնէին ։ Եւ հանգեան նոքա եւ
դադարեցին յայնցանէ որք պատերազ-
մէին ընդ նոսա , զի կոտորեցին ի նոցա-
նէ իբրեւ հինգ հազար ալի յերեքտա-
սաներորդի ամսոյն Ադարայ · եւ ոչ ինչ
17 յափշտակեցին ։ Եւ հանգեան նոքա յե-
րեքտասաներորդ աւուրն նորին ամսոյ ,
եւ կարգեցին զօրն զայն՝ օր հանգըս-
տեան՝ խնդութեամբ եւ ուրախութեամբ ։
18 Եւ Հրեայքն որ էին ի Սիւսի քաղաքի՝
ժողովեցան ի չորեքտասաներորդ աւուր
ամսոյն , եւ ոչ հանգեան . եւ կարգեցին
զհնգետասաներորդ օրն ցնծութեան եւ
19 ուրախութեան ։ Վասն այսորիկ Հրեայքն
ընդ ամենայն երկիր եւ ընդ գաւառս
առնէին տօնս ուրախութեան զօրն չո-
րեքտասաներորդ Ադար ամսոյ, օր բարի
ուրախութեան . եւ առաքէին նուէրս այր
ընկերի իւրում , եւ բնակիչքն որ բնակ-
եալ էին ի մայրաքաղաքսն · եւ զհնգե-
տասաներորդ զօրն զԱդարայ առնէին
նոյնպէս բարեաց եւ ուրախութեան ։
20 Եւ գրեաց Մուրթքէ զբանս զայս ի
գիրս մատենից , եւ առաքեաց Հրէիցն
որ էին ընդ իշխանութեամբ Արտաշիսի
արքայի , մերձաւորաց եւ հեռաւորաց ,
21 Հաստատել կարգել զաւուրս զայսոսիկ
առնել տօն ուրախութեան՝ զչորեքտա-
սաներորդ եւ զհնգետասաներորդ օրն
22 Ադարայ ։ Վասն զի յայսմ երեաւն ա-
ւուրս հանգեան Հրեայքն ի թշնամեաց
իւրեանց . եւ յամսեանն յորում դարձաւ
սուգ նոցա յուրախութիւն , այսինքն է
Ադար , եւ ի ցաւոցն որ դարձաւ յուրա-
խութիւն , կատարել զաւուրսն զայնս՝
23 աւուրս հարսանեաց . Որպէս եւ գրեաց
24 նոցա Մուրթքէ , Եթէ որպէս Համան
Ամադաթեանց Մակեդոնացի պատե-
րազմ տայր ընդ նոսա եւ որպէս եհան
նոցա թիւ համարոյ եւ վիճակ կո-
25 րուսանել զնոսա , Եւ կամ որպէս եմուտ
առ արքայն եւ խնդրէր կախել զՄուրթ-
քէ զփայտէն . եւ որչափ ձեռն ի գործ
արկեալ ածէր ի վերայ Հրէիցն զչարիսն.
եւ եկին մթերեցան լցան չարիք նորա,
եւ կախեցաւ նա եւ որդիք նորա զփայտէ ։
26 Վասն այնորիկ կարգեցան աւուրքս այս
պահոց . վասն զի եւ ժամանակն իւր-
եանց բարբառով ասի Պահք , վասն
բանից հրովարտակիս այսորիկ . եւ որ
ինչ միանգամ անց ընդ նոսա , եւ որ
ինչ եղեւ նոցա , հաստատեաց կայցէ ։
27 Եւ ընդունէին զայս Հրեայքն յանձինս
իւրեանց , ուսուցանէին եւ որդւոց իւր-
եանց , եւ այլ ինչ որ յաւելոյր ի նոսա ։
28 Եւ զամէն ոչ այլափոխեն , եւ աւուրքս
այս յիշատակ լինին յազգս ազգս , ի
քաղաքս եւ ի գաւառս , եւ աւուրքն
այն պահոց պատուեսցին , եւ յիշատակ
նոցա մի պակասեսցէ ազգէ մինչեւ

եաց իւրեանց, եւ սպանին յորոց ատէին զնոսա եւթանասուն եւ հինգ հազար, եւ յաւար անգր ոչ մխեցին ձեռս։ (17) Երեքտասաներորդում աւուրն ամսոյն Ադար, և հանգեան ի չորեքտասաներորդումն, եւ արարին զնա օր խրախութեան եւ խնդութեան։ (18) Եւ Հրեայքն որ ի Շուշան՝ ժողովեցան յերեքտասաներորդումն, եւ ի չորեքտասաներորդում, եւ հանգեան ի հնգետասաներորդումն, եւ արարին զնա օր խրախութեան եւ խնդութեան։ (19) Վասն այսորիկ Հրեայք շինականք, բնակեալք ի գիւղաքաղաքս, առնեն, զօրն չորեքտասաներորդ ամսոյն Ադար օր խնդութեան եւ խրախութեան եւ տօնի, եւ առաքելոյ ընծայս այր ընկերի իւրում։

(20) Եւ գրեաց Մուրթքէ զբանս զայսոսիկ, եւ առաքեաց թուղթս առ ամենայն Հրեայս որ յամենայն գաւառս Ասուերոսի արքայի, մերձաւորաց եւ հեռաւորաց, (21) Պատուէր տուեալ նոցա առնել զօրն չորեքտասաներորդ ամսեանն Ադար, և զօրն հնգետասաներորդ նորին ամսոյ ամի ամի, (22 Ըստ աւուրցն յորս հանգեան ի նոսա Հրեայք ի թշնամեաց իւրեանց, և ըստ ամսեանն որ դարձաւ նոցա ի տրտմութենէ յուրախութիւն, եւ ի սգոյ յօր բարի,) առնել զնոսա աւուրս խրախութեան եւ խնդութեան եւ առաքելոյ ընծայս այր ընկերի իւրում, եւ տուրս կարօտելոց։ (23) Եւ յանձն առին Հրեայքն առնել զոր սկսանն, եւ զոր գրեաց Մուրթքէ առ նոսա։ (24) Զի Համան, որդի Ամադաթայ Ագագացւոյ, թշնամին ամենայն Հրէից, խորհեցաւ ի վերայ Հրէից կորուսանել զնոսա, եւ արկ Փուր, այսինքն վիճակ, ջնջել զնոսա եւ կորուսանել զնոսա։ (25) Եւ իբրեւ եկն նա առաջի արքայի, ասէ հրովարտակաւ, Դարձցի խորհուրդ նորա չար զոր խորհեցաւ զՀրէից՝ ի գլուխ նորա, եւ կախեցին զնա եւ զորդիս նորա զփայտէ։ (26) Վասն այնորիկ կոչեցին զաւուրսն զայնոսիկ Փուրիմ, ըստ անուանն Փուր. վասն որոյ յաղագս բանից հրովարտակիս այսորիկ, եւ յաղագս անցիցն զորս տեսին եւ որ պատահեցանն նոցա, (27) Հաստատեցին եւ առին յանձն Հրեայք վասն իւրեանց եւ վասն զաւակի իւրեանց եւ վասն ամենայն յարելոց ի նոսա, եւ մի՛ անցանիցեն զայնու ի կատարել զաւուրսն զայնոսիկ երկուս ըստ գրոյ նոցա եւ ըստ ժամանակի նոցա ամ ըստ ամէ։ (28) Եւ աւուրքս այսորիկ յիշեսցին եւ պահեսցին յազգ ազգս, ի տոհմս տոհմս, ի գաւառս գաւառս, եւ ի քաղաքս քաղաքս, եւ աւուրքս այսորիկ Փուրիմ մի՛ անցցեն ի միջոյ Հրէից, եւ յիշատակ նոցա մի՛ կորիցէ ի զաւակէ նոցա։

29 յազգ։ Եւ գրեաց Եսթեր դուստր Ամի-
նադաբայ եւ Մուրթքէ այր Հրեայ, եւ
հաստատեցին զպահպանութիւն հրովար-
30 տակիս այսորիկ։ Եւ Մուրթքէ եւ Ես-
թեր կացուցին իւրեանց առանձինն, եւ
ուխտեցին իւրեանց ուխտ եւ խորհուրդ
31 կատարեցին. Եւ Եսթեր երդմամբ հաս-
տատեաց մինչեւ յաւիտեանս ժամանա-
կաց, եւ գրեցաւ ի յիշատակս։

## ԳԼ. Ժ

1 Եւ գրեաց թագաւորն յիշխանութեան
2 իւրում ընդ ծով եւ ընդ ցամաք, Զզօ-
րութիւնն իւր եւ զքաջութիւնն իւր,
եւ զմեծութիւն եւ զփառս թագաւո-
րութեան նորա. ահաւասիկ գրեալ է ի
գիրս յիշատակաց Պարսից եւ Մարաց։
3 Եւ իբրեւ առնոյր Մուրթքէ զթագաւո-
րութիւնն յԱրտաշիսէ, եւ էր մեծ ի
թագաւորութեանն իւրում, եւ փառա-
ւորեալ եւ սիրեցեալ էր ի Հրէից անտի,
եւ պատմէր զիրսն եղեալսն ամենայն
4 ազգատոհմին իւրում։ Եւ ասէ Մուրթ-
5 քէ, ՅԱստուծոյ եղեւ այս. Վասն զի յի-
շեաց զտեսիլ երազոյն՝ զոր ետես վասն
բանիցս այսոցիկ. զի ոչ զանց եղեւ ի
6 նոցանէ բան մի։ Փոքրիկ աղբեւրն որ
եղեւ գետ մեծ, եւ էր լոյս եւ արեւ
եւ ջուր յոյժ, Եսթեր է գետն, զոր ա-
մուսնացաւ թագաւորն եւ արար զնա
7 տիկին։ Եւ երկու վիշապքն՝ ես եմ եւ
8 Համան, Եւ ազգք որք ժողովեալ էին
կորուսանել զանուն Հրէիցն՝ որ է Իս-
9 րայէլ։ Եւ կարդացին առ Աստուած եւ
կեցին. եւ ապրեցոյց Տէր զժողովուրդ
իւր, եւ փրկեաց զմեզ Տէր յամենայն
չարեաց մերոց. եւ արար Աստուած
զնշանս եւ զարուեստս իւր մեծամեծս,
10 որ ոչ եղեն երբեք ի հեթանոսս։ Վասն
այսորիկ արար վիճակս երկուս, զմին
ժողովրդեան Աստուծոյ, եւ զմին ա-
11 մենայն հեթանոսաց։ Եւ եկին այս եր-
կու վիճակքս ի ժամու եւ ի ժամանակս,
եւ յաւուրն դատաստանի առաջի Աս-
12 տուծոյ յամենայն հեթանոսս։ Եւ յիշեաց
Աստուած զժողովուրդ իւր, եւ արդա-
13 րացոյց զժառանգութիւն իւր։ Եւ եղի-
ցին նոցա աւուրքս այս յամսեանն Ա-
դարայ ի չորեքտասան աւուր եւ ի
հնգետասաներորդի նորին ամսոյ, ժողո-
վուրդքն հանդերձ ցնծութեամբ եւ ու-
րախութեամբ առաջի Աստուծոյ, ընդ
ազգս յաւիտենից ի ժողովրդեանն Իս-
րայէլի։"

## ԳԼ. ԺԱ

1 [1]Յամին չորրորդի թագաւորութեանն
Պտղոմեայ եւ Կղէոպատրայ, եմուտ
Դոսիթէոս քահանայ եւ Ղեւտացի, եւ
Պտղոմէոս որդի նորա, զազնուական
գրեալ հրովարտակն՝ զՓրուրեանն, որ
անուանի Լիւսիմաքոս Պտղոմեայ, այն
որ յԵրուսաղէմ։"

(29) Եւ գրեաց Եսթեր տիկին, դուստր Աբիքեղայ եւ Մուրթքէ այր Հրեայ ամենայն զօրութեամբ զհրովարտակս ցայս երկրորդ ի հաստատել զՓուրիմ։ (30) Եւ առաքեաց թուղթս առ ամենայն Հրեայս, ի հարիւր եւ քսան եւ եւթն գաւառս թագաւորութեանն Ասուերոսի, բանիւք խաղաղութեան եւ ճշմարտութեան, (31) Ի հաստատել զաւուրսն զայնոսիկ Փուրիմ ի ժամանակս իւրեանց, որպէս եւ կացոյց ի վերայ նոցա Մուրթքէ Հրեայ եւ Եսթեր տիկին, եւ որպէս հաստատեցին ի վերայ անձանց իւրեանց և ի վերայ զաւակի իւրեանց, զբանս պահոց եւ աղաղակի իւրեանց։ (32) Այսպէս հրամանն Եսթերայ հաստատեաց զբանս զայսոսիկ Փուրիմայ եւ գրեցաւ ի գիրս։

Գլ. Ժ. (1) Եւ արկ արքայ Ասուերոս հարկ ի վերայ ցամաքի և կղզեաց ծովու։ (2) Եւ ամենայն գործք զօրութեանն նորա եւ իշխանութեանն նորա, եւ ընծայութեան մեծութեանն Մուրթքէի որով մեծացոյց զնա թագաւորն, ո՞չ ապաքէն գրեալ են սոքա ի գիրս բանից աւուրց թագաւորացն Մարաց եւ Պարսից։ (3) Զի Մուրթքէ Հրեայ էր երկրորդ արքային Ասուերոսի, եւ մեծ ի Հրեայս, եւ հաճոյ բազմութեան եղբարց իւրոց. որ խնդրէր զբարութիւն ժողովրդեան իւրոյ, եւ խօսէր խաղաղութիւն ամենայն զաւակի իւրում։

[1] Այս գլուխ պակասի յեբրայականին ։

# ԳԻՐՔ ՅՈԲԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 ԱՅՐ ոմն էր [1]յԱւսիդ աշխարհի" ո-
րում անուն էր Յոբ. եւ էր այրն
այն [2]ճշմարիտ, անարատ," արդար,
աստուածապաշտ, մեկնեալ [3]յամենայն
2 իրաց չարութենէ մեղաց"։ Եղեն նորա
3 ուստերք եւթն եւ դստերք երեք։ Եւ
էին խաշինք նորա՝ եւթն հազար ոչ-
խար, ուղտք երեք հազարք, լուծք ե-
զանց հինգ հարիւր, եւ էշք մատակք
[4]արօտականք հինգ հարիւր. եւ սպասք
բազում յոյժ, [4]եւ գործք մեծամեծք էին
նորա ի վերայ երկրի." եւ էր այրն այն
ազնուական քան զամենայն արեւել-
եայսն։
4 Միաբանեալ գային որդիք նորա առ
միմեանս, առնէին խրախութիւն զօր-
հանապազ, առեալ ընդ իւրեանս եւ
զերեսին քորսն իւրեանց՝ ուտել եւ ըմ-
5 պել ընդ նոսա։ Եւ իբրեւ յանգ եղա-
նէին աւուրք խրախութեանն, առաքէր
Յոբ եւ սրբէր զնոսա. յարուցեալ ընդ
առաւօտս մատուցանէր վասն նոցա զոհս
ըստ թուոյ նոցա, [4]եւ զուարակ մի վասն
մեղաց՝ ընդ որդւոց նոցա." քանզի ա-
սէր Յոբ, թէ Գուցէ որդիքն իմ ի միտս
իւրեանց իմացան չարութիւն զԱստու-
ծոյ. այսպէս առնէր Յոբ զամենայն
աւուրս [4]նոցա։
6 Եւ եղեւ իբրեւ օրս այս, եւ ահա
եկին [5]հրեշտակք Աստուծոյ կալ առաջի
Տեառն. եկն եւ Սատանայ ընդ նոսա
[4]յածեալ ընդ երկիր եւ շրջեալ ի նմա"։
7 Եւ ասէ Տէր ցՍատանայ, Դու ուստի՞
գաս։ Պատասխանի ետ Սատանայ Տեառն,
եւ ասէ, Շրջեալ ընդ երկիր եւ յած-
եալ [6]ի ներքոյ երկնից՝ եկեալ կամ"։
8 Եւ ասէ ցնա Տէր, Նայեցա՞ր մտօք քովք
ընդ ծառայ իմ ընդ Յոբ, զի ոչ գոյ
իբրեւ զնա ի վերայ երկրի, այր [7]անա-
րատ, ճշմարիտ" աստուածապաշտ, մեկ-
9 նեալ [3]յամենայն իրաց չարաց"։ Ետ պա-
տասխանի Սատանայ, եւ ասէ ընդդէմ
Տեառն, Միթէ ձրի՞ պաշտիցէ Յոբ [8]զՏէր.
10 Ո՞չ դու ամրացուցեր զարտաքին նորա
եւ զներքին տան նորա, եւ որ ինչ մի-
անգամ արտաքոյ շուրջ զնովաւ է. զգործս
ձեռաց նորա օրհնեցեր, եւ զանասուն
նորա բազմացուցեր ի վերայ երկրի։
11 Բայց ոչ, աղէ առաքեա դու զձեռն քո
եւ արկ յամենայն ինչս նորա. եթէ ոչ
12 յերեսս իսկ օրհնեսցէ զքեզ։ Յայնժամ
ասէ Տէր ցՍատանայ, Ահա զամենայն
ինչս նորա տամ ի ձեռս քո, բայց ի նա
մի՛ մերձենայցես։ Եւ ել Սատանայ յե-
րեսաց Տեառն։
13 Եւ էր իբրեւ զօրս զայս, ուստերքն
Յոբայ եւ դստերք նորա՝ ուտէին եւ
ըմպէին գինի ի տան եղբօրն
14 իւրեանց։ Եւ ահա հրեշտակ եկն առ
Յոբ եւ ասէ ցնա, Հարկիք եզանցն
վարէին, եւ էշքն մատակք արածէին
15 առ նոքօք, Եւ եկին [9]գերեվարք եւ գե-
րեցին զնոսա, եւ զմանկտին կոտորեցին
սրով. եւ միայն ապրեալ՝ եկի պատմել
16 քեզ։ Եւ մինչդեռ նա խօսէր, այլ
հրեշտակ եկն առ Յոբ՝ եւ ասէ ցՅոբ,
[10]Հուր անկաւ յերկնից եւ այրեաց զհօտսն,
եւ զհովիւսն ըստ նմին օրինակի եկեր.
եւ միայն մնացեալ՝ եկի պատմել քեզ։
17 Եւ մինչդեռ նա խօսէր, այլ հրեշտակ
եկն եւ ասէ ցՅոբ, [11]Ասպատակաւորք
ասպատակեցին ի մեզ երեք առաջք,
եւ պատեցան զուղտուքն եւ գերեցին
զնոսա, եւ զմանկտին կոտորեցին սրով.
եւ միայն ապրեալ՝ եկի պատմել քեզ։

---

[1] Եբր. յաշխարհին Հուս. տես Ծննդոց, ԻԲ. 21. [2] Եբր. կատարեալ եւ [3] Եբր. ի չարութենէ [4] Յեբր. պակասէ [5] Եբր. որդիք [6] Եբր. ի նմա

[7] Եբր. կատարեալ եւ արդար եւ [8] Եբր. զԱստուած [9] Եբր. Սաբայեցիք [10] Եբր. Հուր Աստուծոյ [11] Եբր. Քաղդէացիք

18 Եւ մինչդեռ նա խօսէր, այլ հրեշտակ
գայր եւ ասէր ցՅոբ, Մինչդեռ ուս-
տերքն քո եւ դստերք ուտէին եւ ըմ-
19 պէին առ երիցու եղբօրն իւրեանց, Յան-
կարծակի հողմն մեծ եկն յանապատէ եւ
եհար զչորեսին անկիւնս տանն, եւ ան-
կաւ տունն ի վերայ որդւոցն քոց եւ
վախճանեցան. ես միայն ապրեալ՝ եկի
պատմել քեզ։
20 Ապա յարուցեալ Յոբ պատառեաց զհան-
դերձս իւր, եւ կտրեաց զվարս գլխոյ
իւրոյ, եւ անկեալ ի գետին երկիր եպագ
21 Տեառն, Եւ ասէ, Մերկ եկի ես
յորովայնէ մօր իմոյ, եւ մերկանդամ
դարձայց անդրէն. Տէր ետ եւ Տէր առ.
[1]որպէս Տեառն հաճոյ թուեցաւ՝ նոյն-
պէս եւ եղեւ." եղիցի անուն Տեառն
22 օրհնեալ։ Եւ յայսմ ամենայնի [1]անցս որ
անցին ընդ նա" ոչ մեղաւ Յոբ [1]առաջի
Տեառն", եւ ոչ ետ անզգամութիւն
Աստուծոյ։

## ԳԼ. Բ

1 Եւ եղեւ իբրեւ զօրս զայս, եւ եկին
[2]հրեշտակք Աստուծոյ կալ առաջի [3]Աս-
տուծոյ. եկն եւ Սատանայ ի մէջ նոցա
2 ընդ նոսա կալ առաջի Տեառն։ Եւ ասէ
Տէր ցՍատանայ, Դու ուստի՞ գաս։
Յայնժամ ասէ Սատանայ առաջի Տեառն,
[4]Սահեալ ի ներքոյ երկնից եւ շրջեալ
3 ընդ ամենայն, եկեալ կամ"։ Եւ ասէ
Տէր ցՍատանայ, Ապաքէն հայեցա՞ր ընդ
ծառայ իմ Յոբ, զի ոչ գոյ իբրեւ զնա
ի վերայ երկրի այր [5]ճշմարիտ, անա-
րատ," աստուածապաշտ, մեկնեալ [6]յա-
մենայն չարութենէ", եւ տակաւին կայ
[7]յանմեղութեան. եւ դու տարապարտ
խօսեցար կորուսանել զինչս նորա"։
4 Կրկնեաց անդրէն Սատանայ եւ ասէ
ցՏէր, Մորթ ընդ մորթոյ, եւ որ ինչ
իցէ մարդոյ՝ ընդ անձին իւրոյ տուժեսցի.
5 Ապա թէ ոչ, աղէ առաքեա զձեռն քո
եւ արկ զոսկերօք եւ զմարմնովք նորա,
եթէ ոչ յերեսս իսկ օրհնեսցէ զքեզ։
6 Եւ ասէ Տէր ցՍատանայ, Ահա մատ-
նեմ զնա քեզ, բայց միայն զոգի նորա
պահեսցես։
7 Եւ ել Սատանայ յերեսաց Տեառն, եւ
եհար զՅոբ չարաչար կեղով յոտից մին-
8 չեւ ցգլուխ։ Եւ առեալ խեցի՝ քերէր
[8]զթարախն, եւ նստէր յաղբեւս արտա-
քոյ քաղաքին։
9 Եւ իբրեւ բազում ժամանակ անցանէր
ի վերայ, ասէ ցնա կինն իւր, Մինչեւ
յե՞րբ ժուժկալեալ ասիցես, թէ Ահա համ-
բերեմ տակաւին սակաւ ինչ ժամանակ՝
ակն կալեալ յուսոյ փրկութեան իմոյ։
Ահաւասիկ ապականեալ է յիշատակ քո ի
վերայ երկրի. ուստերք քո եւ դստերք՝
իմոյ որովայնի երկք եւ երկունք, յորս տա-
ռապեցայ վաստակեցի տառապանօք։
Դու ինքն ի գաղջութիւն որդանց նստիս
օթագայեալ բացական, եւ ես՝ մոլոր-
եալ եւ հարկահար տուն ի տանէ եւ
տեղի ի տեղւոջէ, սպասեմ թէ երբ
մտանիցէ արեգակն՝ զի հանգեայց ի տա-
ռապանաց իմոց եւ ի ցաւոց իմոց որ
այժմ պատեալ են զինեւ։ Աղէ ասա
10 բան ինչ ի Տէր, եւ վախճանեաց։ Եւ
նորա հայեցեալ ընդ նա՝ ասէ", Իբրեւ
զմի ի կանանց անզգամաց խօսեցար.
եթէ զբարիսն ընկալաք [9]ի ձեռանէ
Տեառն", չարեացս ո՞չ համբերիցեմք։ Եւ
յայսմ ամենայնի [1]որ ինչ անցք անցին
ընդ նա", ոչ մեղաւ Յոբ շրթամբք իւ-
րովք [1]առաջի Տեառն, եւ ոչ ետ անզ-
գամութիւն Աստուծոյ"։
11 Եւ լուեալ երից բարեկամացն զչարիսն
ամենայն որ հասին ի վերայ նորա,
եկին յիւրաքանչիւր աշխարհէ առ նա,
Եղիփազ [10]արքայ Թեմնացւոց, Բաղ-
դատ բռնաւոր Սաւքեցւոց, Սոփար
արքայ Մինեցւոց". եւ եկին առ նա
միաբան մխիթարել եւ այցել զնա։
12 Եւ տեսեալ զնա ի բացուստ՝ ոչ ծանեան,
եւ բարբառեալ մեծաձայն լացին, եւ
պատառեցին իւրաքանչիւր զպատմու-
ճան իւր, եւ ցանեցին հող ի վերայ
գլխոց իւրեանց ընդ երկինս [1]հայելով։
13 Եւ նստան շուրջ զնովաւ յերկրի զեւթն
օր եւ զեւթն գիշեր. եւ ոչ ոք ի նո-
ցանէ խօսեցաւ ընդ նմա բան. քանզի
տեսանէին [11]զանհնարին հարուածն եւ
զմեծամեծս յոյժ"։

---

[1] Յեբր․ պակասէ [2] Եբր․ որդիք [3] Եբր․ Տեառն
[4] Եբր․ Շրջեալ ընդ երկիր, եւ յածեալ ի նմա
[5] Եբր․ կատարեալ եւ արդար եւ [6] Եբր․ ի չարութենէ [7] Եբր․ ի կատարելութեան իւրում. թէպէտ եւ դու գրգռեցեր զիս ի նա՝ կլանել զնա տարապարտուց

[8] Եբր․ զանձն նորա, եւ նստէր ի մոխրի։ (9) Եւ ասէ ցնա կինն իւր. Տակաւին կա՞ս ի կատարելութեան քում. աղէ օրհնեա զԱստուած, եւ վախճանեաց։ (10) Եւ ասէ ցկինն [9] Եբր․ յԱստուծոյ
[10] Եբր․ Թեմնացի, Բաղդադ Սաւքեցի, Սոփար Նաամացի [11] Եբր․ եթէ մեծ էր յոյժ վիշտ նորա

Գլ. Գ

1 Եւ ապա ուր ուրեմն Յոբ եբաց զբե-
2 րան իւր, եւ անէծ զօրն իւր, [1]Եւ ասէ,
3 Կորիցէ օրն յորում ես ծնայ, եւ գի-
շերն՝ յորում ասացին թէ Արու այր։
4 Խաւարեսցի [2]գիշերն այն, եւ մի՛ խնդ-
րեսցէ զնա [3]Տէր ի վերուստ. մի՛ եկեսցէ
5 ի վերայ նորա լոյս։ Ընկալցի զնա խա-
ւար եւ ստուեր մահու, եկեսցէ ի վե-
6 րայ նորա [4]մէգ։ Անիծեալ լիցի օրն այն
եւ գիշերն, եւ տարցի զնա՝ խաւար.
մի՛ եղիցի յաւուրս տարւոյ, եւ մի՛
7 թուեսցի յաւուրս ամսոյ։ Այլ գիշերն
այն եղիցի [5]ի ցաւս, եւ մի՛ եկեսցէ ի
վերայ նորա ուրախութիւն եւ ցնծու-
8 թիւն։ [6]Այլ նզովեսցէ զնա որ նզովելոցն
է զօրն զայն, որ զբռամբ ածելոցն իւր
9 է՝ զմեծ վիշապն։ Խաւարեսցին աս-
տեղք գիշերոյն այնորիկ, սպասեսցէ [7]եւ
ի լոյս մի՛ եկեսցէ, եւ մի՛ տեսցէ զա-
10 րուսեակն ծագեալ՝։ Զի ոչ փակեաց
զդրունս արգանդի մօր իմոյ, [8]զի թեր-
11 եւս մերժէր՝ զցաւս յաչաց իմոց։ Իսկ
ընդէ՞ր յորովայնի ոչ վախճանեցայ, այլ
ելի յարգանդէ եւ ոչ անդէն վաղվաղակի
12 կորեայ։ Ընդէ՞ր [9]զկալեցան զինձ ծնունդք՝,
կամ ընդէ՞ր զիեցի ես զստինս մօր իմոյ։
13 Զի այժմ հանգուցեալ դադարէի, եւ
14 ննջեցեալ հանգչէի Ընդ թագաւորս եւ
ընդ խորհրդականս երկրի, որք [10]հպար-
15 տացեալ էին ի սուրս իւրեանց՝, կամ
ընդ իշխանս որոց բազում էր ոսկի,
որք լցին զտունս իւրեանց արծաթով.
16 Կամ իբրեւ զանցուցեալն՝ որ ելանէ յար-
գանդէ մօր իւրոյ, կամ իբրեւ զտղայս
17 որ ոչ տեսին զլոյս։ Անդ ամբարիշտք
[11]որ բորբոքեցին զպատմութիւն բար-
կութեան. անդ հանգեան աշխատեալքն
18 մարմնով, Ի միասին յախանականք՝
19 որք ոչ լուան զձայն հարկահանի՝։ Փոքր
եւ մեծ անդ են, եւ ծառայ անկերկեւղ
20 ի տեառնէ իւրմէ։ Իսկ ընդէ՞ր տուեալ
իցէ անձանց զառանցելոց լոյս, եւ կեանս
21 ցաւագնելոց ոգւոյք, Որ ցանկան մա-
հու, եւ ոչ [12]հասանեն. փորեն իբրեւ
22 զգանձս՝. Եւ խնդալից լինին եթէ գտա-
23 նիցեն զմահ. Մարդոյ [13]հանգիստ է յորմէ
ճանապարհն թաքեաւ ի նմանէ՝, զի
24 փակեաց զնովաւ Աստուած։ Յառաջ քան
զկերակուրս իմ՝ հեծութիւն եհաս, ար-
25 տասուօք եւ ահիւ նեղեալ եմ։ Զի եր-
կեւղն յորմէ խիթայի եկն ի վերայ իմ,
26 եւ յորմէ կասկածէի պատահեաց ինձ։ Ոչ
խաղաղեցայ, ոչ դադարեցի, ոչ հանգեայ.
քանզի եկն ի վերայ իմ բարկութիւն։

Գլ. Դ

1 Կրկնեալ անդրէն Եղիփազու Թեմանաց-
2 ւոյ ասէ, Միթէ [14]բազո՞ւմ անգամ լեալ
իցեն քո բանք աշխատութեամբ, եւ
զօրութեան բանից քոց ո՞ հանդարտեսցէ։
3 Զի եթէ՝ խրատեցեր դու զբազումս, եւ
4 զձեռս տկարս մխիթարեցեր. Եւ [15]զհի-
ւանդացեալս կանգնեցեր բանիւք, եւ
ծնկաց կթուցելոց քաջալերութիւն զգե-
5 ցուցեր, Եւ արդ եկին հասին ի վերայ
[16]քո ցաւք. սակայն դու վաղվաղեցեր՝։
6 Ո՞չ ապաքէն երկեւղդ քո [17]անզգամու-
թիւն է, եւ կասկածդ քո եւ անչարու-
7 թիւն ճանապարհի քո՝։ Արդ յիշեա, ո՞
ոք որ՝սուրբ էր՝ կորեաւ, կամ ճշմա-
8 րիտք արմատաքի երբեք խլեցա՞ն։ Զոր
օրինակ տեսի զայնոսիկ որ [18]զանօրէ-
նութեան արօրադիր առնեն, որ սերմանեն
9 [19]զնոսա՝ ցաւս հնձեսցեն ի նոցանէ։ Ի
հրամանէ Տեառն՝ կորիցեն, ի հոգւոյ
10 բարկութեան նորա սատակեսցին։ [20]Զօ-
րութիւն առիւծու, զոչիւն մատակ ա-
ռիւծու, [21]սկրճութիւն վիշապաց՝ չի-
11 ջաւ։ Մրջնառիւծն՝ սատակեցաւ առ ի
չգոյէ կերակրոյ, կորիւնք առիւծու լքին

---

[1]Եբր. Եւ ետ պատասխանի Յոբ եւ [2]Եբր. օրն [3]Եբր. Աստուած [4]Եբր. մէգ, եւ զարհուրեցուսցեն զնա որ մթացուցանեն զտիւ։ (6) Զգիշերն զայն՝ կալցի [5]Եբր. ամայի [6]Եբր. Նզովեսցեն զնա, որ նզովեն զտիւ, ճարտարք ի յարուցանել [7]Եբր. լուսոյ եւ ոչ իցէ, և մի՛ տեսցէ զարտեւանունս այգուն [8]Եբր. եւ ոչ թաքոյց [9]Եբր. ընկալան զիս ծունկք [10]Եբր. շինեն իւրեանց աւերակս [11]Եբր. դադարեն ի տանջելոյ, եւ անդ հանգչին աշխատեալք յուժոյ (18) Նոյնպէս կալանաւորք հանգչին, ոչ լսեն զձայն հարստահարչի

[12]Եբր. հասանէ. խնդրեն զայն առաւել քան զգանձս ծածկեալս [13]Եբր. որում ճանապարհ նորա թաքուցեալ է [14]Եբր. խօսեսցի՞ս, եթէ փորձեսցուք խօսել առ քեզ. սակայն ո՞ կարիցէ ժուժկալել առ ի չխօսելոյ (3) Ահա [15]Եբր. զոր սահելոց էր [16]Եբր. քո, եւ խռովեցար, մերձեցաւ ի քեզ, եւ տագնապեցար [17]Եբր. յոյս քո է, և անկեղծութիւն քո՝ ուղղութիւն ճանապարհաց քոց [18]Եբր. զանօրէնութիւն [19]Եբր. զթշուառութիւն՝ զնոյն հնձեսցեն (9) Ի շնչոյ Աստուծոյ [20]Եբր. Մռնչիւն [21]Եբր. ժանիք կորեանց առիւծու խորտակեցան։ (11) Առեւծ հուժկու

12 զմխիթարս։ [1]Եթէ էր տակաւին բան
ճշմարիտ եղեալ ի խօսս քո, ոչ ինչ
յայդպիսեաց չար պատահէր քեզ։ Ու-
րեմն ո՞չ ընդունիցի ունկն իմ հրաշա-
13 կերտս ի նմանէ։ Արհաւիրք եւ բամ-
բիւնք գիշերականք, հասեալ են ի վե-
14 րայ մարդկան", Դողումն եւ սոսկումն
պատահեցին ինձ, եւ մեծապէս զոսկերս
15 իմ շարժեցին։ Եւ եկն [2]հողմ ի վերայ
երեսաց իմոց, քամնեցին [3]հերք իմ եւ
16 մարմինք։ Կանգնեցայ՝ եւ ոչ գիտացի.
ահա՛ եւ ո՞չ էին կերպարանք առաջի
աչաց իմոց, [4]բայց միայն օդ եւ ձա-
17 յնակի լսէի։ Իսկ արդ միթէ սո՞ւրբ
լինիցի մարդ առաջի Տեառն, կամ ի
18 գործոց իւրոց անարատ այր, Եթէ ծա-
ռայից իւրոց ոչ հաւատայցէ, եւ զհրեշ-
տակաց խոտորագոյնս ինչ իմացաւ։
19 Իսկ արդ զբնակեալս ի տունս կաւե-
ղէնս, յորոց եւ ինքեանք ի նմին կաւոյ
եմք, եհար զնոսա ըստ օրինակի ցեցոյ։
20 Եւ յառաւօտէ մինչեւ յերեկոյ ոչ եւս
իցեն. քանզի անձամբ անձին օգնել ոչ
21 կարէին, կորեան։ Փչեաց ի նոսա եւ
ցամաքեցան, սատակեցան՝ քանզի ոչ
էր ի նոսա իմաստութիւն"

## Գլ. Ե

1 Արդ աղէ կարդա, թէ ոք տայցէ՞ քեզ
ձայն, [5]կամ թէ զոք ի հրեշտակաց սրբոց
2 տեսցե՞ս"։ Քանզի եւ զանզգամ սպա-
նանէ բարկութիւն, եւ զմոլորեալն մե-
3 ռուցանէ նախանձ։ Ես՝ ես տեսի ան-
զգամաց արմատս ձգեալ, այլ վաղվա-
4 ղակի [6]հարան յարկք" նոցա։ Հեռի լի-
ցին որդիք նոցա ի փրկութենէ, կոխե-
ցեսցին առ դրունս [7]վատթարաց, եւ ոչ
5 ոք իցէ որ փրկիցէ։ Զի զոր նոքայն
ժողովեցին [8]արդարք կերիցեն, եւ նո-
քա մի՛ եղիցին ապրեալք ի չարեաց.
6 ծծեսցի զօրութիւն նոցա"։ Զի ոչ եթէ
յերկրէ ելանիցէ [9]աշխատութիւն, եւ ոչ
7 ի լերանց բուսանիցին ցաւք։ Այլ մարդ
աշխատութեամբ ծնանի. ձագք ար-
8 ծուեաց" ի բարձունս թռչին։ Բայց սա-
կայն ես [10]խնդրեցից ի Տեառնէ, եւ զՏէր
9 զամենեցուն կարդացից", Որ
առնէ զմեծամեծս եւ զանքննինս եւ
զփառաւորս եւ զհրաշալիս որոց ոչ
10 գոյ թիւ. Որ տայ անձրեւ յերկիր, ա-
11 ռաքէ ջուրս ի ներքոյ երկնից. Որ առնէ
զխոնարհս ի բարձունս, եւ [11]կանգնէ
12 զկորուսեալս", Եւ փոխէ զխորհուրդս
խորամանկաց, եւ [12]ոչ գործեսցեն ձեռք
13 նոցա զճշմարտութիւն. Որ հասանէ ի-
մաստնոց հանճարով", եւ զխորհուրդս
14 բազմախիթաց յիմարեցոյց։ Ի տուէ
պատահիցէ նոցա խաւար, եւ ի միջօրէի
15 իբրեւ ի գիշերի խարխափեսցեն։ [13]Սա-
տակեսցին պատերազմաւ", եւ աղքատն
16 ապրեսցի ի ձեռանէ հզօրին։ Եղիցի յոյս
17 տկարի, բերան անիրաւի խցցի։ Երան-
եալ է մարդ զոր յանդիմանեաց [14]Տէր,
եւ ի խրատուէ Ամենակալին մի՛ հրա-
18 ժարեսցես։ Զի նա ցաւեցուցանէ, եւ
միւսանգամ անդրէն հաստատէ. եհար՝
19 եւ ձեռք նորա բժշկեցին։ Վեցիցս ի
վշտաց փրկեսցէ զքեզ, եւ յեւթներոր-
20 դումն ոչ մերձեսցի առ քեզ չար։ Ի
սովի՝ փրկեսցէ զքեզ ի մահուանէ, ի
պատերազմի՝ ի ձեռաց երկաթոյ ար-
21 ձակեսցէ զքեզ։ Ի տանջանաց լեզուի
ծածկեսցէ զքեզ, եւ մի՛ երկիցես ի չար-
22 եաց [15]եկելոց ի վերայ քո. Զանիրաւս
եւ զանօրէնս արհամարհեսցես", ի գա-
23 զանաց վայրենեաց ոչ երկիցես. Զի ընդ
քարինս վայրի դաշինք քո, եւ գազանք

---

[1]Եբր. Արդ առ իս բան գաղտագողի եհաս, եւ ընկալաւ ունկն իմ շշնջիւն ի նմանէ։ (13) Յարհաւիրս տեսլեանց գիշերոյ, յանկանել թմբրութեան ի վերայ մարդկան [2]Կամ. ոգի [3]Եբր. մազք մարմնոյ իմոյ։ (16) Կանգնեցաւ եւ ոչ գիտացի զտեսիլ նորա. [4]Եբր. լռութիւն եղեւ եւ լսէի բարբառ. (17) Միթէ լինիցի՞ մարդ արդար քան զԱստուած. միթէ այր քան զԱրարիչ իւր իցէ՞ սուրբ. (18) Ահա ի ծառայս իւր ոչ հաւատայ, եւ ի հրեշտակս իւր գտանէ բիծս. (19) Ո՛րչափ եւս առաւել ի բնակեալսն ի տունս կաւեղէնս, որոց ի փոշւոջ հիմունք նոցա. ճմլին նոքա վաղ քան զցեց։ (20) Յառաւօտէ մինչեւ յերեկոյ խորտակին. կործանին յաւիտեան առ ի չառնելոյ ուրուք փոյթ։ (21) Ո՞չ ապաքէն մեկնեալ է փառաւորութիւն նոցա որ ի նոսա. մեռանին նոքա, եւ ոչ իմաստութեամբ։ [5]Եբր. եւ յո՞ր ի սրբոց հայեսցիս [6]Եբր. անիծի զբնակութիւն

[7]Եբր. դրանէ [8]Եբր. քաղցեալն կերիցէ, եւ ի փշոյ կորզիցէ զայն, եւ ծարաւին կլանէ զստացուածս նոցա [9]Եբր. անօրէնութիւն, եւ ոչ ի գետնոյ բուսանիցի թշուառութիւն։ (7) Այլ մարդ ի թշուառութիւն ծնանի, որպէս որդիք կայծականց [10]Եբր. կարդայցից առ Աստուած, եւ Աստուծոյ յանձն արարից զդատ իմ [11]Եբր. զսուգաւորս ելանեն ի դեր [12]Եբր. ոչ առնիցեն ձեռք նոցա հաստատութիւն (13) Ըմբռնէ զիմաստունս ի խորամանկութեան իւրեանց [13]Եբր. Եւ ապրեցուցանէ ի սրոյ, ի բերանոյ նոցա [14]Եբր. Աստուած [15]Եբր. եկելոց. (22) Ի վերայ կործանման եւ սովու ծիծաղեսցիս

24 վայրենիք խաղաղասցին ընդ քեզ։ Ապա
գիտասցես թէ խաղաղութիւն է տան
քո, եւ [1]բնակութիւն յարկի քո մի՛
25 վրիպեսցի՞։ Եւ ծանիցես զի բազում է
զաւակ քո, եւ որդիք քո եղիցին իբ-
26 րեւ զբանջար վայրի։ Եւ երթիցես ի
գերեզման [2]իբրեւ զցորեան հասեալ՝ ի
ժամանակի հնձելոյ, կամ՞ իբրեւ զշեղջ
27 կալոյ ի ժամանակի ամբարելոյ։ Ահա-
ւասիկ զայս այսպէս քննեցաք, այս է
զոր լուաքն. բայց դու գիտասջիր յանձն
քո՝ զինչ գործեցեր։

## Գլ. Զ

1 Կրկնեալ անդրէն Յոբայ ասէ, (2) Եթէ
կշռելով ոք կշռէր զբարկութիւնս իմ,
եւ զցաւս իմ միանգամայն բառնայր ի
3 լուծ կշռոյ, Բան զաւազ ծովու ծան-
րագոյն լինէր. նա ուրեմն բանք իմ
4 անզգամք են։ Զի նետք [3]Տեառն ի
մարմնի իմում են, եւ սրտմտութիւն
նոցա ծծէ զարիւն իմ. յորժամ սկսա-
5 նիմ խօսել՝ կատեն զիս՞։ Իսկ արդ՝
զիա՞րդ, մինթէ տարապարտո՞ւց խանչիցէ
ցիռ, բայց եթէ կերակուր խնդրիցէ.
կամ թէ զոչիցէ՞ եզն առ մսուր՝ յորժամ
6 ունիցի զկերակուր. Կամ ուտիցի՞ [4]հաց
առանց աղի, կամ գուցէ՞ համ [5]ի բանս
7 ունայնս։ Սա՛ ոչ կարէ հանդարտել
անձն իմ, զի չարաւոլ տեսանեմ զկե-
8 րակուր իմ՝ իբրեւ զհոտ առիւծու։ Զի
եթէ տայցէ՝ եւ եկեսցեն յիս խնդրուածք
9 իմ, եւ զյոյս իմ տացէ Տէր։ Սկսաւ
Տէր խոցոտել զիս, բայց ի սպառ մի՛
10 սպանցէ զիս։ Եղիցի ինձ քաղաքն իմ
գերեզման՝ յորոյ վերայ պարսպացն ճեմէի,
եւ ի նմա ոչ խնայեցից. զի ոչ սուտ արա-
11 րից զբանս սրբոյն Աստուծոյ իմոյ։՞ Զի
զի՞նչ է զօրութիւն իմ եթէ համբերից,
կամ զի՞նչ [6]ժամանակ՝ զի համբերեսցէ
12 անձն իմ՞։ Մինթէ զօրութիւն վիմա՞ց իցէ
զօրութիւն իմ, կամ մարմինք իմ պղնձի՞ք.
13 [7]կամ թէ ո՞չ ի նա ապաւինէի։ Արդ՞
օգնութիւն իմ մերժեցաւ յինէն, եւ
ողորմութիւն հրաժարեաց [8]յինէն, այ-
ցելութիւն Տեառն անտես արար զիս։
14 Ոչ հայեցան յիս մերձաւորք իմ, (15) Իբրեւ
զվտակ սպառեալ եւ իբրեւ զալիս ան-
16 ցին զինեւ։ Որք սարսէին յինէն՝ արդ
17 ահաւասիկ հասին ի վերայ իմ։ Իբ-
րեւ զձիւն կամ իբրեւ զսառն պաղեալ՝
որ հալիցի ի հասանելոյ ջերմութեան եւ
18 ոչ ճանաչիցի թէ ուպէս էր, Նոյնպէս
եւ ես լքայ յամենեցունց, կորեայ եւ
19 անանկացայ։ Տեսէք զճանապարհս Թեմ-
նացւոց՝ որք ի շաւիղս Սաբայ հայիք,
20 Եւ ամօթ կրեսցեն յուսացեալքն ի քա-
21 ղաքս եւ յինչս։ Դու եւ դուք աւադիկ
անողորմ հասէք ի վերայ իմ. հայեցեալ
22 ի վէրս իմ՝ երկներուք։ Արդ ես զձե՞զ
23 ինչ խնդրեցի, Կամ ձերո՞վ զօրութեամբդ
կարօտեալ իցեմ ապրեցուցանել զիս ի
թշնամեաց, կամ ի ձեռաց հզօրաց փրկել
24 զիս։ Ուսուցէք զիս՝ եւ ես լռեցից. եւ
եթէ մոլորեալ ինչ իցեմ, արարէք զիս

---

[1] Եբր. այց արասցես բնակութեան քում, եւ մի՛ վրիպեսցիս [2] Եբր. ի բարւոք ծերութեան, [3] Եբր. Ամենակալին յիս են, զթոյն նոցա ծծէ ոգի իմ. արհաւիրք Աստուծոյ ճակատին ընդդէմ ինձ [4] Եբր. անհամ ինչ [5] Եբր. ի սպիտակուց ձուոյ։ (7) Յորս մերձենալ զարշէր անձն իմ, այնք եղեն ինձ կերակուր զզուանաց։ (8) Ո՛ տայր թէ գայր խնդրուած իմ, եւ զակնկալութիւն իմ տայր Աստուած. (9) Եւ կամէր Աստուած ճնշել զիս, ձգէր զձեռն եւ սատակէր զիս։ (10) Եւ լինէր ինձ տակաւին մխիթարութիւն, եւ ուրախ եղէց ի ցաւս անողորմս, զի ոչ ուրացայ զբանս Սրբոյն։ [6] Եբր. կատարած իմ, զի երկայնամիտ եղէց

[7] Եբր. (13) Ո՞չ ապաքէն [8] Եբր. յինէն։ (14) Լքելոյն գթութիւն ի բարեկամէ իւրմէ. բայց նա զերկեւղ Ամենակալին եթող։ (15) Եղբարք իմ խաբեցին իբրեւ զհեղեղ. իբրեւ զհեղեղս ձորոց որ անցանեն. (16) Որ պղտորին ի սառնամանեաց, ի գիզելոյ ձեան ի վերայ նոցա. (17) Ի ժամանակի ջերմութեան ցամաքեցին, ի տօթի անհետ լինին ի տեղւոջէ իւրեանց։ (18) Կարաւանք խոտորեցուցանեն զճանապարհ իւրեանց, ելանեն յամայութիւն եւ կորնչին. (19) Հայեցան կարաւանք Թեմնացւոց, ճանապարհորդք Սաբայ ակն կալան նոցա. (20) Յամօթ եղեն զի յուսացան. եկին մինչեւ անդր, եւ ամաչեցին։ (21) Զի արդ եղերուք յոչինչ. տեսէք բեկումն, եւ երկերուք։ (22) Միթէ ասացի՞ ձեզ, Բերէք ինձ, եւ յընչից ձերոց տուք վասն իմ. (23) Կամ ապրեցուցէք զիս ի ձեռանէ թշնամւոյն, եւ ի ձեռաց հզօրաց փրկեցէք զիս. (24) Ուսուցէք զիս, եւ ես լռեցից. եթէ մոլորեալ ինչ իցեմ, արարէք զիս խելամուտ։ (25) Բանի՛ զօրեղ են բանք ուղղութեան, այլ զի՞նչ կշտամբանք յանդիմանութեանդ ի ձէնջ։ (26) Միթէ ի յանդիմանե՞լ զբանս խորհեցարուք. այլ ընդ հողմն են բանք յուսահատելոյն։ (27) Ապաքէն անկանիք ի վերայ որբոյ, եւ փորէք վասն բարեկամի ձերոյ։ (28) Եւ այժմ կամեցարուք հայել յիս, եւ յայտնի լինիցի ձեզ եթէ ստեցի՞ց։ (29) Դարձարուք, մի՛ լիցի անիրաւութիւն. եւ դարձարուք այսրէն, արդարութիւն իմ ի սմին։ (30) Միթէ գուցէ՞ անիրաւութիւն ի լեզուի իմում. միթէ քիմք իմ ո՞չ խտրեսցեն զանիրաւութիւնս։

25 խեղամուտ։ Այլ ուրեմն խոտան են
բանք ճշմարտի. քանզի ոչ ի ձէնջ
26 խնդրեմ զօրութիւն։ Եւ ոչ կշտամբանք
բանից ձերոց լռեցուցանեն զիս, եւ ոչ
27 բարբառոյ բանից ձերոց անսացից։ Բայց
զի իբրեւ ի վերայ որբոյ յարուցեալ էք
ի վերայ իմ, եւ խաղացեալ էք ի վերայ
28 բարեկամի ձերոյ։ Բայց արդ հայեցեալ
յերեսս ձեր ոչ ստեցից. Նստարուք, եւ
մի ինչ լիցի անիրաւութիւն ի դատաս-
29 տանի, Եւ դարձեալ իրաւանց ուշ ու-
30 նիցիք։ Զի ոչ գոյ ի լեզուի իմում անի-
րաւութիւն, կամ կոկորդ իմ ոչ խո-
կայցէ յիմաստութիւն։

## Գլ. Է

1 [1]Ո՞չ ապաքէն իբրեւ զփորձութիւն են
կեանք մարդոյ ի վերայ երկրի, եւ իբրեւ
զաւուրս վարձու վարձկանի կեանք
2 նորա։ Կամ իբրեւ զծառայ երկուցեալ
ի տեառնէ իւրմէ եւ զօղեալ ընդ հո-
վանեաւ, եւ իբրեւ զվարձկան որ սպա-
3 սիցէ վարձուց իւրոց, Նոյնպէս եւ ես
սպասեցի ամսոց ունայնեաց. գիշերք ցա-
4 ւագին տուեալ են ինձ։ Եթէ ննջեցից՝
ասեմ, Ե՞րբ իցէ տիւ. եւ եթէ յառնիցեմ՝
դարձեալ թէ Ե՞րբ իցէ երեկ. լի ցաւօք
լինիմ յերեկորեայ մինչեւ ցառաւօտ։
5 Թաթաւին մարմինք իմ զազրութեամբ
որդանց, մաշեցի զկոշտս երկրի առ ի
6 զթարախս քերելոյ։ Եւ կեանք իմ թե-
թեւագոյնք են քան զխօսս, եւ կորեան
7 յունայնութեան յուսոյ։ Յիշեա զի փուք
են կեանք իմ, եւ ոչ դարձցի ակն իմ
8 ի տեսանել զբարի։ Եւ ոչ հայեսցի յիս
ակն տեսողի. աչք քո յիս՝ եւ ես ոչ
9 եւս իցեմ։ Իբրեւ զամպ ջնջեալ յերկ-
նից. զի եթէ իջանիցէ մարդ ի դժոխս.
10 Ոչ եւս ելցէ եւ ոչ դարձցի ի տուն իւր,
11 եւ ոչ եւս ծանիցէ զնա տեղի իւր։ Այ-
սուհետեւ ոչ եւս խնայեցից ի բերան
իմ, խօսեցայց մինչեւ իցեմ ի վիշտս,
բացից զդառնութիւն անձին իմոյ ապա-
12 նեալ։ Միթէ ծո՞վ իցեմ կամ վիշա՞պ,
13 զի կարգեցեր զինեւ պահ։ [2]Ասացի թէ
Մխիթարեսցեն զիս մահիճք իմ, վճա-
րեցից զինէն զբանս յանկողնի իմում։
14 Զարհուրեցուցանես զիս երազովք, եւ
15 տեսլեամբք հարկանես զիս։ [3]Թափես
զոգի յանձնէ իմմէ, եւ ի մարմնոյ զշունչ
16 իմ, եւ ի մահուանէ զկեանս իմ. Զի ոչ
եթէ յաւիտեան կեամ, եթէ երկայնա-
միտ եղէց։ Ի բաց կաց յինէն, զի ըն-
17 դունայն են կեանք իմ։ Զի զի՞նչ է
մարդ՝ զի մեծացուցեր զնա, կամ զի
18 հայիցիս ի նա մտօք, [4]Կամ այցելութիւն
առնիցես նմա մինչեւ ցառաւօտ, եւ ի
19 հանգիստ դատիցիս զնա։ Մինչեւ յե՞րբ
ոչ թողուցուս զիս, եւ ոչ ընդարձա-
կիցես ինձ մինչեւ ցուովք կլանիցեմ
20 զաոգուկս իմ։ Զի թէ մեղայ՝ զի՞նչ կա-
րիցեմ առնել քեզ, որ գիտես զմիտս
մարդկան. ընդէ՞ր եդիր զիս քեզ ոսոխ,
21 եւ իցեմ [5]քեզ բեռն։ Եւ ընդէ՞ր ոչ ա-
րարեր մոռացումն անօրէնութեան իմոյ
եւ սրբութիւն մեղաց իմոց. արդ ահա
[6]յերկիր դառնայցեմ՝ կանխեալ, եւ այլ
ոչ եւս իցեմ։

## Գլ. Ը

1 Կրկնեալ անդրէն Բաղդատայ Սաւքեց-
2 ւոյ ասէ, Մինչեւ յե՞րբ խօսիցիս զայդ.
եւ ոգի [7]մեծաբանութեան ի բերան քո։
3 Միթէ անիրաւ դատիցի [8]Տէր, կամ որ
զամենայն արար՝ պղտորիցէ՞ զիրաւունս։
4 Եթէ որդիքն քո մեղան առաջի նորա,
առաքեաց [9]ի ձեռին զանօրէնութիւնս
5 նոցա։ Բայց դու կանխեա առ Տէր ա-
6 մենակալ աղօթիւք, Եթէ սուրբ եւ
ճշմարիտ իցես՝ աղօթից քոց լուիցէ,
դարձուսցէ քեզ զյարկն արդարութեան.
7 Եւ լինիցին առաջինքն քո սակաւք, եւ
վերջինքն քո անթիւք։

[1]Եբր. (1) Ո՞չ ապաքէն պատերազմ է մարդոյ ի վերայ երկրի, եւ իբրեւ աւուրք վարձկանի աւուրք նորա։ (2) Որպէս ծառայ ցանկայ ստուերի, եւ որպէս վարձկան սպասիցէ վարձու իւրում, (3) Նոյնպէս եւ ինձ եղին բաժին ամիսք ունայնութեան, եւ գիշերք տառապանաց հաշուեցան ինձ։ (4) Եթէ ննջեմ, ասեմ, Ե՞րբ յարեայց. եւ երկայն է երեկոյ, և յագեալ եմ ի շրջշրջելոյ մինչեւ ցառաւօտ։ (5) Ծածկեալ է մարմին իմ որդամբք եւ կոշտիւք հողոց. մորթ իմ պատառի եւ հալի։ (6) Աւուրք իմ արագագոյն են քան զկկոց ոստայնանկաց, եւ սպառին ի վախճանի անյոյս։

[2]Եբր. Եթէ ասեմ, Անկողին իմ մխիթարեսցէ զիս, մահիճք իմ բարձցեն զտրտունջ իմ [3]Եբր. Եւ ընտրեաց զխեղդ առնուլ անձն իմ, զմահ՝ քան զոսկերս իմ։ (16) Գարշեալ իմ, ոչ յաւիտեան կեցից [4]Եբր. Եւ այցելութիւն առնիցես նմա առաւօտուց, եւ փորձեսցես զնա յամենայն ժամ [5]Եբր. ինձ [6]Եբր. ննջեցից ի հող, եւ եթէ խնդրեսցես զիս [7]Եբր. ուժգին բանք բերանոյ քո [8]Եբր. Աստուած, եւ Ամենակալն [9]Եբր. զնոսա ի ձեռս անօրէնութեան նոցա. (5) Եթէ դու կանխեսցես առ Աստուած, և կացցես յաղօթս առ Ամենակալն

8 Բայց աղէ հարց զազգն առաջին, եւ
9 քննեա ըստ ատոհմից հարցն . (Զի երէկ-
եանք եմք, եւ ոչ գիտեմք . քանզի
ստուեր են կեանք մեր ի վերայ երկրի.)
10 Կամ թէ ո՞չ նոքին իսկ ուսուսցեն զքեզ
եւ պատմեսցեն, եւ ի սրտէ հանիցեն
11 զբանս ։ Միթէ կանաչանայ՞ պրտու ա-
ռանց ջրոյ, կամ բարձրանայցէ՞ կնիւն
12 առանց ըմպելոյ . Մինչդեռ անդէն ի վե-
րայ արմատոյ իւրոց է՝ [1]ո՞չ հնձեսցի .
յառաջ քան զպրբենայ ամենայն բանջար
13 եթէ ոչ առոյանի՝ ո՞չ ցամաքիցի ։ Արդ
այնպէս եղիցի վախճան ամենեցուն որ
մոռանայցեն [2]զՏէր . զի յոյս ամպարշտի
14 կորիցէ ։ [3]Անշէն լիցի տուն նորա,
անցցէ իբրեւ սարդխոստայն յարկ նորա՞.
15 Թէպէտ եւ [4]հաստատեսցէ զտուն իւր՝
մի՛ կացցէ, յարկանել ձեռին նորա՝ մի՛
16 հանդարտեսցէ ։ Զի խոնաւութիւն յա-
րեգական է, եւ ի նեխութենէ՞ նորա
17 ելցէ շառաւիղ իւր ։ [5]Ի վերայ կարկառի
քարանց ննջեսցէ, եւ ի մէջ մանրախիճ
քարանց կեցցէ . եթէ ընկլցէ զնա տե-
18 ղին՝ ստեսցէ ։ Ո՞չ տեսեր այսպիսի ինչ.
19 Զի կործանումն ամպարշտի այսպիսի է,
20 եւ յերկրէ այլ բուսցի ։ Զի Տէր՞ ոչ
մերժէ զանմեղն, [6]զամենայն պատարագ
21 ամպարշտի ոչ ընկալցի ։ Բերանք ճշմար-
տից լցցին ծաղու, եւ շրթունք նոցա՞
22 գոհութեամբ ։ Թշնամիք նոցա զգեցցին
զամօթ, յարկք ամպարշտի ոչ եւս իցեն

## Գլ. Թ

1 Կրկնեալ անդրէն Յոբայ ասէ, (2)Ճշմար-
տիւ գիտեմ թէ այդ այդպէս իցէ . քան-
զի զիա՞րդ լինիցի մարդ արդար առաջի
3 Աստուծոյ ։ [7]Զի եթէ կամիցի դատել ընդ
նմա, [8]ոչ լուիցէ նմա . զի եւ մի բան
հազար բանի՞ պատասխանի ոչ տացէ ։

4 Զի իմաստուն է մտօք՝ զօրաւոր եւ մեծ՝
ո՞ խստացաւ ընդդէմ նորա, եւ հան-
5 դարտեաց ։ Որ [9]հնացուցանէ զլերինս
եւ ոչ գիտեն, որ տապալէ զնոսա բար-
6 կութեամբ ։ Որ [10]շարժէ զտա ի ներքոյ
երկնից ի հիմանց՞, եւ սիւնք նորա դո-
7 ղան ։ Որ ասէ արեգական եւ ոչ ծագէ,
8 եւ ընդդէմ աստեղաց կնքէ ։ Որ ձգեաց
զերկինս միայն, եւ շրջի ի վերայ ծո-
9 վու իբրեւ յատակի ։ Որ արար զԲազ-
մաստեղսն եւ [11]զԳիշերավարն եւ զԱյգն
10 եւ զշտեմարանս հարաւոյ ։ Որ առնէ
զմեծամեծս [12]եւ զանքննինս եւ զփառա-
ւորս՞ եւ զհրաշալիս՝ որոց ոչ գոյ
11 թիւ ։ Եթէ վերասցի քան զիս՝ ոչ տե-
սից, եւ եթէ անցցէ առ ինեւ՝ եւ ոչ
12 այնպէս գիտացից ։ Եւ եթէ [13]ստա-
կեսցէ՝ ո՞ դարձուսցէ, կամ ո՞վ ասիցէ
13 զնա թէ Զի՞նչ արարեր ։ [14]Զի նա դար-
ձաւ ի բարկութենէ, եւ ի նմանէ սոր-
14 ւեցին կէտք որ ի ներքոյ երկնից ։ Իցէ՛
թէ լուիցէ ինձ, կամ խրատացուցանիցէ
15 զբանս իմ ։ Եթէ իցեմ արդար՝ ոչ լուիցէ
ինձ . եւ զդատաստանն նորա աղաչեցից՞
16 Եւ եթէ կարդացից եւ անսացէ՝ չհա-
17 ւատամ թէ լուաւ իմ ինձ ։ Եւ որ մր-
րկով սատակեսցէ զիս . բազում են հար-
ուածք զոր արար ինձ տարապարտուց ։
18 Ոչ տայ ինձ հանգչել . զի լցոյց զիս
19 դառնութեամբ . [15]Քանզի հզօր է՝ բռնա-
նայ . իսկ արդ ո՞ իցէ, որ դատաստանի
20 նորա կացցէ հակառակ՞ ։ Իսկ եթէ իցեմ
եւս արդար, սակայն բերան իմ ամ-
պարշտեսցէ . եւ եթէ իցեմ անարատ,
21 կամակոր գտանիցիմ ։ [16]Զի եթէ ամ-
պարշտեցի յանձն իմ՝ ոչ գիտեմ, բայց
22 զի բառնան յինէն կեանք իմ ։ Վասն որոյ

---

[1] Եբր. մինչդեռ հատեալ, յառաջ քան զամենայն խոտ [2] Եբր. զԱստուած [3] Եբր. Յոյս նորա հատցի, եւ տուն սարդխոստայն՝ վստահութիւն նորա [4] Եբր. յենուցու ի տուն իւր՝ եւ մի՛ կացցէ, հաստատեսցէ զնա, եւ մի՛ կանգնեսցի ։ (16) Դալար է նա յառաջ քան զարեգակն, եւ ի վերայ պարտիզի [5] Եբր. Արմատք նորա պատին զկարկառաւ քարանց, զտուն քարանց տեսանէ ։ (18) Եթէ խլեսցէ ոք զնա ի տեղւոջէ իւրմէ, նա յուրաստ լիցի զնմանէ թէ Ո՛չ տեսի զքեզ ։ (19) Ահա այս է ուրախութիւն ճանապարհի նորա, եւ ի հողոյ այլք բուսցին ։ (20) Ահա Աստուած [6] Եբր. ոչ ձեռնտու լիցի ամպարշտաց, (21) Մինչեւ լցցէ զբերան քո ծաղու, եւ զշրթունս քո [7] Եբր. Եւ [8] Եբր. միում ի հազարաց

[9] Կամ, փոխէ [10] Եբր. սասանեցուցանէ զերկիր ի տեղւոջէ իւրմէ [11] Եբր. զՀայկն [12] Եբր. որ ոչ քննին [13] Եբր. յափշտակեսցէ [14] Եբր. Աստուած ոչ դարձուսցէ զբարկութիւն իւր, ընդ նովաւ խոնարհեսցին օգնականք ամբարտաւանութեան ։ (14) Զիա՞րդ տաց նմա պատասխանի, ընտրեցից զբանս իմ ընդ նմա . (15) Զի եթէ արդար եւս իցեմ, ոչ տաց պատասխանի . առ որ դատելոցն է զիս՝ արկից աղերս ։ [15] Եբր. Եթէ զզօրութենէ, ապաքէն հզօր է, եւ եթէ զիրաւանց, ո՞ ընծայեցուսցէ զիս [16] Եբր. Եթէ անմեղ կատարեալ եմ, ոչ գիտեմ զանձն իմ, արհամարհեմ զկեանս իմ ։ (22) Մի եւ նոյն է . վասն որոյ ասացի եթէ զկատարեալն եւ զամպարիշտ սպառէ նա ։ (23) Եթէ հարուածն սպանցէ վաղվաղակի, զփորձանաց անմեղին ծիծաղեսցի նա ։ (24) Երկիր տուեալ է ի ձեռս ամպարշտին . զերեսս

տասցի, թէ զմեծն եւ զհզօրն կորու-
23 սանէ բարկութիւն։ Զի չարք յանհնա-
րին մահու կորիցեն. այլ արդարք ծաղր
լինին, զի մատնին ի ձեռս ամպարշտի։
24 Ձեռնս՞ դատաւորաց նորա ծածկեսցէ.
25 եւ եթէ ոչ նա է՝ ո՞վ իցէ։ Այլ իմ կեանք
թեթեւագոյն են քան զսուրհանդակ,
26 փախեան եւ ոչ ¹երեւեցան։ Եւ կամ
թէ իցեն նաւաց հետք ճանապարհի,
եւ կամ արծուոյ թռուցելոյ որ խնդրիցէ
զկերակուր։
27 ²Եթէ ասիցեմ եթէ խօսեցայց՝ մոռա-
նամ, զերեսս ի վայր արկեալ՝ հեծեծե-
28 ցից։ Շարժեալ եմ ամենայն անդամօք
իմովք, զի գիտեմ զի անպարտ զիս ոչ
29 թողուցուս։ Որովհետեւ ամպարշտեմ,
30 ընդէ՞ր ոչ մեռայ՞ Եթէ լուացայց ձեամբ,
31 եւ սրբեցայց ձեռօք սրբեցելովք, ³Սաստ-
կացեալ աղտով ընկէց զիս, զազրացոյց
32 զիս պատմուճան իմ՞։ Զի ոչ ես իբրեւ
զիս մարդ՝ ընդ որում դատեցայց, եթէ
33 հասարակ եկեսցուք ի դատաստան։ Իսկ
յանկարծ գոյր միջնորդ, եւ յանդիմա-
34 նէր եւ լսէր ի մէջ երկոցունց։ Ի բաց
մերժեսցէ յինէն զգաւազանն, եւ ահ նո-
35 րա զիս մի՛ զարհուրեցուսցէ, Եւ մի՛
երկեայց՝ այլ խօսեցայց. ⁴Նա եւ ոչ այն-
պէս ես գիտեմ, աշխատեալ անձամբ
իմով՞։

## Գլ. Ժ

1 ⁵Հեծեծելով հասուցից ի նա զբանս իմ,
խօսեցայց դառնութեամբ անձին թախ-
2 ծեալ, Եւ ասացից, Տէր, մի՛ ուսուցա-
ներ զիս ամպարշտել. եւ ընդէ՞ր այս-
3 պէս դատեցար զիս. Կամ թէ բարւո՞ք
թուիցի քեզ՝ թէ անիրաւիցեմ. զի մեր-
ժեցեր զգործս ձեռաց քոց, եւ ի խոր-
4 հուրդս ամպարշտաց հայեցար՞։ Միթէ
որպէս հայի ա՞յր՝ հայիցիս, կամ որպէս
5 տեսանիցէ մա՞րդ՝ տեսանիցես. ⁶Կամ թէ
6 ամք քո իբրեւ զմա՞ն, Զի փերատին
խնդրեցեր զանօրէնութիւնս իմ, եւ զմեղս
7 իմ քննեցեր։ Գիտես զի ոչ ամպարիշ-
տեցայ, այլ ո՞վ է որ ի ձեռաց քոց
հանիցէ։
8 Ձեռք քո արարին զիս եւ ⁷ստեղծին,
9 եւ ապա շրջեցար հարեր՞ զիս։ Յիշեա
զի կաւ ստեղծեր զիս, եւ յերկի՞ր միւս-
10 անգամ դարձուցանես զիս։ Կամ թէ
ո՞չ իբրեւ զկաթն կթեցեր զիս, եւ մա-
11 ծուցեր զիս իբրեւ զպանիր։ Մորթ եւ
միս զգեցուցեր ինձ, ոսկերօք եւ ջլօք
12 հանար զիս։ Զկեանս եւ զողորմութիւն
եդիր ի վերայ իմ, այցելութիւն քո
13 պահեաց զոգի իմ։ ⁸Զայս ամենայն ու-
նիս ի քեզ. գիտեմ զի յամենայնի կա-
րօղ ես, եւ ոչ ինչ տկարանայ քեզ՞։
14 Թէ եւ մեղանչեմ՝ պահես զիս, եւ յա-
նօրէնութենէ անպարտ ոչ արարեր զիս։
15 Եթէ ամպարշտեցայց՝ վա՜յ է ինձ, եւ
եթէ արդարացայց՝ ոչ կարեմ հայել ի
16 վեր, զի լի եմ ⁹անարգանօք։ Որսաց-
եալ եմ իբրեւ զառեւծ ի սպանումն.
դարձեալ կրկնեալ չարաչար սատակես
17 զիս. Նորոգես ի վերայ իմ զհարուածս
իմ. բարկութեամբ մեծաւ ձեռն արկեր
18 յիս, եւ ածեր ի վերայ իմ հէնս՞։ Ըն-
դէ՞ր հաներ զիս յորովայնէ եւ ոչ ան-
դէն մեռայ, եւ ական չէր տեսեալ զիս,
19 Իբրեւ զչեղեալ լինէի. ընդէ՞ր յարգանդէ
20 ի գերեզման ոչ վճարեցայ։ Կամ թէ ո՞չ
սակաւ իցէ ժամանակ կենաց իմոց.
¹⁰Թող արա ինձ սակաւիկ մի հանգչել,
21 Մինչչեւ երթեալ իցեմ՝ ուստի ոչ դառ-
նայցեմ՝ յերկիր խաւարին եւ ¹¹մթին,
22 Յերկիր աղջամղջին յաւիտենականն, ուր
ոչ գոյ լոյս եւ ոչ տեսանել զկեանս
մարդկան՞։

¹Եբր. տեսին բարութիւն ²Եբր. Եթէ ասիցեմ, Մոռացայց զբողոք իմ, թողից զտխրութիւն իմ եւ եղէց ուրախ, (28) Երկնչիմ յամենայն ցաւոց իմոց, զի գիտեմ զի անպարտ զիս ոչ թողուցուս։ (29) Զի պարտաւորելոց եմ, ընդէ՞ր ի զուր ջանայցեմ։ ³Եբր. Ցայնժամ ընկղմեսցես զիս ի փոս, գարշեսցի յինէն պատմուճան իմ ⁴Եբր. զի չեմ այնպիսի յանձին իմում ⁵Եբր. Տաղտկացեալ է անձն իմ ի կենաց իմոց արձակեցից զբողոք իմ. խօսեցայց դառնութեամբ անձին իմոյ. (2) Ասացից ցԱստուած, Մի՛ դատապարտ առներ զիս. տուր ինձ գիտել թէ վասն է՞ր հակառակիս ընդ իս. (3) Բարւո՞ք թուիցի քեզ տանջել զիս, զի խոտես զգործս ձեռաց քոց. եւ տաս լոյս խորհրդոց ամպարշտաց։

⁶Եբր. Միթէ իբրեւ զաւուրս մարդո՞յ աւուրք քո. կամ ⁷Եբր. ստեղծին բոլորովին, եւ արդ ջնջե՞ս ⁸Եբր. Եւ զայսոսիկ թաքուցեր ի սրտի քում. գիտեմ զի ի քեզ է այդ ⁹Եբր. անարգանօք. Հայեաց ի տառապանս իմ։ (16) Եթէ ամբարձայց, իբրեւ առեւծ որսայցես զիս. եւ դարձցիս, զարմանալի եղիցիս յիս։ (17) Նորոգես զվկայս քո յանդիման ինձ, եւ յաճախեսցես զբարկութիւն քո ի վերայ իմ. փոփոխութիւնք եւ մարտք ընդ իս։ ¹⁰Եբր. դադարեաց, ի բաց կաց յինէն, թող ¹¹Եբր. ստուերաց մահու. (22) Յերկիր աղջամղջին իբրեւ զմէգ ստուերաց մահու, ուր չիք կարգ, եւ մթացի իբրեւ մառախուղ։

## Գլ. ԺԱ

1 [1]Կրկնեալ անդրէն Սովփարայ Մինեցւոյ
2 ասէ, Որ չատ խօսի՝ առաջէն բան նմին
եւ լուիցէ. կամ որ խօսուն իցէ՝ կա-
3 րիցէ՞ բանիւք արդարանալ։ Օրհնեալ է
ծնունդ կանանց սակաւակեաց։ Մի՛
զբաղում բանիւք անկանիր, զի ոչ գոյ
4 որ տայցէ քեզ պատասխանի։ Մի՛ ասեր
թէ Սուրբ եմ գործովք եւ անարատ ա-
5 ռաջի Տեառն։ Այլ թէ զիա՞րդ Տէր խօ-
սեսցի ընդ քեզ, եւ բացցէ զշրթունս
6 իւր ընդ քեզ։ Ապա պատմեսցէ քեզ
զզօրութիւն իմաստութեան, զի կրկին
եղիցի քան զքոյն. եւ ապա գիտաս-
ցես՝ թէ արժանի ըստ որոց մեղարն
7 անց ընդ քեզ ի Տեառնէ։ Եթէ զհետս
Տեառն գտանիցե՞ս, կամ ի վերջինսն
հասանիցե՞ս զոր արար Ամենակալն։
8 Բարձր են երկինք, եւ զի՞ գործիցես.
խոր են դժոխք, եւ դու՞ զի՞ խելա-
9 մտեսցես։ Երկայն է չափ [2]երկրի, լայն
10 է ծով։ Եւ եթէ տապալեսցէ [2]զամե-
նայն", ո՞վ ասասցէ նմա թէ զի՞նչ գոր-
11 ծեցեր։ Ինքն գիտէ զգործս անօրինաց,
տեսեալ զանարժանս՝ ո՞չ արասցէ ան-
12 տես։ Բայց [3]մարդ ի խօսել ընդ վայր,
զօղի բանիւք". այր կանանցածին նմա-
13 գոյն է յաւոյ անապատականի։ Իսկ եթէ
դու սուրբ եղիր զսիրտ քո, տարածես
14 առ նա զձեռս քո։ Ապա թէ իցէ ի ձե-
ռին քում անօրէնութիւն, հեռի արա
զայն ի քէն, եւ անօրէնութիւն ի յարկի
15 քում մի՛ ազցի։ Ապա [4]ծագեսցեն երեսք
քո իբրեւ զջուր յստակ, մերկասցես
16 զաղտեղութիւն" եւ ոչ երկիցես, [5]Եւ
մոռասցիս զաշխատութիւն իբրեւ զալիս
17 անցեալս՝ եւ ոչ զարհուրեսցիս։ Աղօթք
քո իբրեւ զարուսեակն, ի միջօրէի ծա-
գեսցեն քեզ կեանք. վստահացեալ լի-
ցիս՝ զի կայ քո յոյս, ի հոգոյ եւ ի
տրտմութենէ երեւեսցի քեզ խաղա-
18 ղութիւն։ Հանգարտեսցես՝ եւ ոչ ոք
19 իցէ որ պատերազմիցի ընդ քեզ։ Դարձ-
ցին բազումք եւ աղաչեսցեն զքեզ.
20 փրկութիւն պակասեսցէ ի նոցանէ. Զի
յոյս նոցա կորուստ է անձանց իւրեանց.
աչք ամպարշտաց հալեսցին։"

## Գլ. ԺԲ

1 Կրկնեալ անդրէն Յոբայ ասէ, (2) [6]Արդ
եւ դուք մարդիկ իցէք", կամ ընդ ձեզ
3 վախճանիցի իմաստութիւն։ Եւ իմ
4 միտս իբրեւ զձերդ [7]է։ Զի այր ար-
դար եւ անարատ եղեւ ի կատականս։
5 Ի ժամանակի սահմանեալ պատրաստե-
ցաւ, կործանել յօտարէ՝ զտունս իւր
6 եւեւս աւերեալս յանօրինաց։ Սակայն
մի՛ ոք որ չար իցէ՝ յուսասցի անպարտ
լինել. ամենայն որ միանգամ բարկա-
ցուցանեն զՏէր, մի թէ ո՞չ լինիցի նոցա
7 խնդիրք"։ Բայց ազէ հարց զչորքոտա-
նիս՝ եթէ ասիցեն քեզ, զթռչունս երկ-
8 նից՝ եթէ պատմեսցեն քեզ։ Ճառեա
երկրի, եթէ խելամուտ արասցէ զքեզ,
եւ կամ պատմեսցեն քեզ ձկունք ծո-
9 վու։ Ո՞վ է որ ոչ գիտաց այսու ամե-
նայնիւ եթէ ձեռն Տեառն արար զայս։
10 Եւ եթէ ո՞չ ի ձեռին նորա իցէ շունչ
ամենայն կենդանեաց եւ ոգի ամենայն

---

[1]Եբր. Կրկնեալ անդրէն Սոփարայ Նաամացւոյ ասէ, (2) Մի թէ բազմութեան բանից ո՞չ տացի պատասխանի, կամ որ խօսուն իցէ՝ կարիցէ՞ բանիւք արդարանալ։ (3) Բաջաղանք քո լռեցուսցե՞ն զմարդիկ. եւ սաղրեսցես ծաղր, եւ չիցէ՞ որ յամօթ արասցէ։ (4) Զի ասացեր եթէ Սուրբ են բանք իմ, եւ եմ անարատ յաչս քո։ (5) Այլ ո՜ տայր թէ խօսէր Աստուած, եւ բանայր զշրթունս իւր ընդ քեզ. (6) Եւ յայտնէր քեզ զգաղտնիս իմաստութեան, զի կրկին է յազդեցութեան. եւ գիտասջիր զի ոչ արժանի ըստ որոց մեղարն անց ընդ քեզ ի Տեառնէ։ (7) Մի թէ զգաղտնիս Աստուծոյ գտանիցե՞ս, կամ մինչեւ ի կատարելութիւն Ամենակալին հասանիցե՞ս։ (8) Բարձր է քան զերկինս, զի՞ գործիցես. խոր է քան զդժոխս, [2]Եբր. Նորա քան զերկիր, լայն՝ քան զծով։ (10) Եթէ յարձակեսցի, եւ փակեսցէ եւ ժողովեսցէ [3]Եբր. մարդ ունայն պակասամիտ է [4]Եբր. ամբարձցես զերեսս քո անարատ, եւ եղիցիս պինդ

[5]Եբր. Զի դու զտառապանս մոռասցիս, իբր եւ զալիս անցեալս յիշեսցես. (17) Եւ քան զմիջօրեայ ծագեսցեն կեանք քո. խաւարեսցիս, իբրեւ զառաւօտ եղիցիս. (18) Եւ վստահացեալ լիցիս, զի կայ քո յոյս. եւ որոնեսցես, ննջեսցես յապահովի. (19) Եւ հանգիցես, եւ ոչ ոք զարհուրեցուսցէ զքեզ, եւ խնդրեսցեն զերեսս քո բազումք։ (20) Իսկ աչք ամպարշտաց հալեսցին, եւ ապաւէն կորիցէ ի նոցանէ, եւ յոյս նոցա՝ փչումն ոգւոյ։ [6]Եբր. Արդարեւ դուք էք ժողովուրդ [7]Եբր. է, չեմ նկուն քան զձեզ. եւ ո՞ ոչ գիտիցէ զայսպիսիս։ (4) Այսպէս եղեալ ընկերի իւրում եղէ ես, որ կարդայն առ Աստուած, եւ նա տացէ նմա պատասխանի. այր արդար կատարեալ լինի ի կատականս։ (5) Որպէս լապտեր աւերեալ յաչս ամբարտաւանից, այնպէս այր որոյ սահեալ իցեն ոտք։ (6) Ի յաջողութեան են վրանք աւազակաց, եւ յապահովի որ բարկացուցանեն զԱստուած, լցուցանէ Աստուած զձեռս նոցա։

11 մարդոյ։ [1]Զի միտք զբանս քննեն", եւ
12 քիմք զկերակուրս ճաշակեն։ [2]Բազում
ժամանակաւ իմաստութիւն, եւ ի բա-
13 զում կեանս հանճար"։ Ի նմանէ է ի-
մաստութիւն եւ զօրութիւն, նորա է
14 խորհուրդ եւ հանճար։ Եթէ կործանեսցէ՝
ո՞ շինեսցէ, եւ եթէ փակեսցէ ընդդէմ
15 մարդկան՝ ո՞ բանայցէ։ Եթէ արգելցէ
զջուրս՝ ցամաքեցուցանէ զերկիր, եւ
եթէ թող տացէ՝ կորոյս զնա կործա-
16 նեալ։ Ի նմանէ է զօրութիւն եւ ուժ-
գնութիւն, նորա է [3]հանճար եւ իմաս-
17 տութիւն"։ Վարէ զխորհրդականս ի գե-
րութիւն, եւ զդատաւորս երկրի յիմա-
18 րեցոյց։ [4]Նստուցանէ զթագաւորս յա-
թոռս", եւ ածէ գօտի ընդ մէջ նոցա։
19 Առաքէ զքահանայս ի գերութիւն. եւ
20 զզօրաւորս երկրի կործանեաց. Փոխէ
զշրթունս հաւատարմաց, եւ զհանճար
21 ծերոց [5]ծանեաւ։ Հեղու անարգութիւն
ի վերայ իշխանաց, եւ [6]զխոնարհս բժշ-
22 կեաց"։ Յայտնէ զխորս խաւարի, եւ ե-
23 հան ի լոյս զստուերս մահու։ [7]Մոլորե-
ցուցանէ զազգս՝ եւ կորուսանէ զնոսա,
24 սփռէ զազգս՝ եւ առաջնորդէ նոցա։ Փո-
փոխէ զսիրտս իշխանաց երկրի, մոլո-
րեցոյց զնոսա ի ճանապարհի զոր ոչ
25 գիտէին։ Շօշափեսցեն զխաւար եւ ոչ
զլոյս, [8]մոլորեսցին իբրեւ զարբեալ։

ԳԼ. ԺԳ

1 Ահա զայս ամենայն եատես ակն իմ, եւ
2 լուաւ ունկն [9]իմ։ Եւ գիտեմ ես՝ որ-
չափ եւ դուք խելամուտ էք, եւ չեմ
3 անմտագոյն քան զձեզ։ Բայց սակայն
ես ընդ [10]Տեառն խօսեցայց, յանդիմա-
նեցայց առաջի նորա՝ եթէ կամեսցի։
4 Բայց դուք ինձ բժիշկք մեղանչականք
էք, եւ ողջացուցիչք չարեաց ամենե-
5 քեան"։ Եղիցի ձեզ համրանալ, եւ համա-
6 րեալ լիցի ձեզ յիմաստութիւն։ Լուարուք
զյանդիմանութիւն բերանոյ իմոյ, եւ
զդատաստանի շրթանց իմոց անսայէք։
7 Ո՞չ ապաքէն [11]առաջի Տեառն խօսիցիք",
եւ յանդիման նորա նենգութիւն բար-
8 բառիք։ Կամ թէ թանգուզիցէ՞ք. [12]զի
դուք ամենեքեան դատաւորք եղերուք։
9 Զի բարւոք է եթէ քննեսցէ զձեզ. զի
եթէ զամենայն արարեալ յաւելուցուք
10 ի նա, Ոչ ինչ սակաւ կշտամբեսցէ զձեզ.
11 եւ" եթէ ի ծածուկ աչառիցէք։ Ո՞չ ա-
պաքէն արհաւիրք նորա զարհուրեցու-
ցանիցեն զձեզ, եւ ահ նորա անկցի ի
12 վերայ ձեր։ [13]Եւ գիրեսցին պերճու-
թիւնքդ ձեր հանգոյն մոխրոյ, եւ մար-
13 մին կաւեղէն"։ Կարկեցարուք՝ զի խօ-
սեցայց ես, [14]եւ հանգեայց ի սրտմտու-
14 թենէ։ Առեալ" զմարմինս իմ յատա-
մունս իմ, եւ զոգի իմ եդից ի ձեռին
15 իմում։ [15]Եթէ արկցէ զձեռն իւր զինեւ
Հզօրն, քանզի եւ սկսեալ իսկ է. եթէ
ո՞չ խօսեցայց եւ յանդիմանեցայց առաջի
16 նորա։ Եւ այն գիտեսցի" ինձ ի փրկու-
թիւն, քանզի ոչ մտցէ առաջի նորա
17 նենգութիւն։ Լուարուք, լուարուք
բանից իմոց, զի պատմեցից ձեզ յու ի
18 յու։ Զի ահաւասիկ մերձեալ եմ ի դա-
տաստանս իմ, եւ գիտեմ զի արդար
19 երեւեցայց ես։ Զի ո՞վ է ոսոխն իմ եկեսցէ,
զի արդ կարկեցայց եւ պակա-
20 սեցայց։ [16]Երկու ինչք սիրոյ են ինձ",
եւ յայնժամ յերեսաց քոց ես ոչ թա-
21 քեայց։ Զձեռն քո ի բաց արա յինէն, եւ
22 ահ քո զիս մի՛ զարհուրեցուսցէ։ Եւ
ապա կոչեսցես զիս, եւ ես [17]լուայց քեզ.
եւ եթէ խօսեսցիս, եւ ես տաց քեզ"
23 պատասխանի։ Քանի՞ ինչ են մեղք
եւ անօրէնութիւնք իմ, ուսո ինձ
24 [18]քանի՞ օն իցեն"։ Ընդէ՞ր թաքուցանես
[19]յինէն, համարիցիս զիս քեզ ոսոխ,

---

[1] Եբր. Ո՞չ ականջք ընտրեն զբանս [2] Եբր. Առ ծերս է իմաստութիւն, եւ յերկարութեան աւուրց՝ հանճար [3] Եբր. որ քակէն եւ որ խաբի [4] Եբր. Լուծանէ զիշխանութիւն թագաւորաց [5] Եբր. քաւնոյ [6] Եբր. զբռնութիւն հզօրաց ակարացոյց [7] Եբր. Բազմացուցանէ [8] Եբր. մոլորեցուցանէ զնոսա [9] Եբր. իմ եւ ի միտ առ [10] Եբր. Ամենակալին խօսեցայց և դատել ընդ Աստուծոյ կամեցայց։(4) Բայց դուք ստայօդք էք, բժիշկք ունայնութեան ամենեքին

[11] Եբր. վասն Աստուծոյ խօսիք զանիրաւութիւն [12] Եբր. կամ վասն Աստուծոյ լինիցիք դատախազք. (9) Միթէ բարւո՞ք է եթէ քննեսցէ զձեզ, միթէ որպէս խաբէք զմարդ, խաբիցէ՞ք զնա։(10) Յանդիմանելով յանդիմանեսցէ զձեզ [13] Եբր. Յիշատակք ձեր առակք մոխրոյ, պատնէշք ի կաւոյ՝ պատնէշք ձեր [14] Եբր. եւ անցցէ ընդ իս զինչ եւ անցցէ, (14) Ընդէ՞ր առից [15] Եբր. Թէպէտ եւ սպանցէ զիս, յուսացայց ի նա. բայց եւ այնպէս զճանապարհս իմ առաջի երեսաց նորա յանդիմանեցից, (16) Արդարեւ նա է [16] Եբր. Զերկուս եւ եթ մի՛ արարցես ընդ իս [17] Եբր. տաց պատասխանի. կամ խօսեցայց եւ տացես ինձ [18] Եբր. զյանցուածս իմ [19] Եբր. զերեսս քո, եւ

25 [1]Կամ թէ ի հողմաշարժ տերեւո՞յ երկնչի-
ցիս, կամ իբրեւ հողմակոծ խոտո՞յ կացցես
26 ինձ հակառակ"։ Զի գրեցեր զինէն չարիս,
եւ արկեր զինեւ զմեղս մանկութեան։
27 Եդիր [2]զոտս իմ ի արգելանս, պահե-
ցեր զամենայն զգործս իմ", եւ յար-
28 մատս ոտից իմոց հասեր, [3]Որ իբրեւ զտիկ
հնացեալ են", կամ իբրեւ զձորձս ցեցակեր։

ԳԼ. ԺԴ

1 Զի այր կանանցածին սակաւակեաց է
2 եւ լի [4]բարկութեամբ. Որ իբրեւ զծա-
ղիկ ծաղկեալ՝ թօթափեցաւ, խոյս ետ
3 իբրեւ ստուեր, եւ մի՛ կացցէ։ [5]Ո՞չ ա-
պաքէն եւ այնմ հոգայ առնիցես, եւ
նմա" տայցես մտանել ի դատաստան
4 [6]առաջի քո"։ Իսկ արդ ո՞վ [7]իցէ սուրբ
5 յաղտոյ", այլ եւ ոչ ոք. [8]Թէպէտ եւ
միոյ աւուր իցեն կեանք նորա ի վերայ
երկրի. համարեալ են ամիսք նորա առ
ի նմանէ". ժամանակ եդիր եւ ոչ անցցէ։
6 Ի բաց կեր ի նմանէ՝ զի դադարեսցէ
[9]եւ ամաքեսցէ զկեանս" իբրեւ զվարձ-
7 կան։ Զի զոյ յոյս ծառոյ անգրէն. զի
թէպէտ եւ կտրեսցի՝ միւսանգամ ծաղ-
կեսցէ, եւ շառաւիղ նորա մի՛ պակասես-
8 ցէ։ Եթէ ծերասցի յերկրի արմատ նորա՝
եւ ի քարի վախճանեսցի բուն նորա,
9 Ի հոտոյ ջրոյ ծաղկեսցի, եւ արասցէ
10 հունձս իբրեւ զնորատունկ։ Բայց այր
վախճանեալ գնաց, անկեալ մարդ՝ եւ
11 ոչ եւս իցէ։ Զի ժամանակաւ անօսրի
ծով, եւ գետք աւերեալ ցամաքեցան.
12 Եւ մարդ ննջեաց՝ եւ ոչ յարիցէ. մին-
չեւ երկինք չիցեն՝ ոչ կարկատեսցին,
13 եւ ոչ զարթիցեն ի քնոյ իւրեանց։ Ե-
րանի՛ թէ ի դժոխս պահէիր զիս, եւ
թաքուցանէիր զիս մինչեւ անցանէր
բարկութիւն քո. եւ ժամանակէիր ինձ
ժամանակ՝ յորում առնէիր ինձ յիշատակ։
14 Եթէ մեռանիցի մարդ՝ կեցցէ՞, [10]վախ-
ճանեալ զաւուրս կենաց իւրոց. սպա-
15 սեցից մինչ միւսանգամ լինիցիմ". Ապա
կոչեսցես զիս, եւ ես տաց քեզ պատաս-
խանի. [11]զգործս ձեռաց քոց մի՛ մերժեր.
16 Թուեցեր" զգնացս իմ, եւ մի՛ անցցէ
17 ինչ զքեւ ի մեղաց իմոց։ Կնքեցեր
զանօրէնութիւնս իմ ի քսակի, եւ [12]նշա-
նակեցեր թէ ակամայ ինչ յանցեայ։
18 Սակայն եւ լեառն որ փլանելոց է փլցի,
եւ վէմ հնասցի" ի տեղւոջէ իւրմէ։
19 Զքարինս ողորկեցին ջուրք, եւ ողողե-
ցին ջուրք [13]զզաշտս թանձրութեան"
երկրի. եւ զակնկալութիւն մարդոյ կո-
20 րուսեր. [14]Մերժեցեր զնա" ի սպառ, եւ
գնաց. հաստատեցեր ի վերայ նորա զե-
21 րեսս՝ եւ արձակեցեր։ [15]Թէպէտ եւ բա-
զում որդիք լինիցին նորա՝ ոչ գիտէ,
եւ եթէ սակաւք անիցեն՝ ոչ ճանաչէ".
22 Այլ մարմինք նորա ախտացան ի վերայ
իւր, եւ ոգի նորա սգացաւ զինքն։

ԳԼ. ԺԵ

1 Կրկնեալ անգրէն Եղիփազու Թեմնաց-
2 ւոյ ասէ, [16]Ապաքէն հանճարեղն ոգւով
իմաստութեամբ տայցէ պատասխանի.
եւ լուցու աշխատութեամբ որովայնի",
3 Յանդիմանել բանիւք որ ոչ իցէ արժան,
4 խօսիւք որ ոչ իցէ յօգուտ։ [17]Զարդ եւ
դու զերկիւղ մերժեցեր, եւ զաւարտե-
ցեր առաջի Տեառն զայդպիսի բանս։
5 Պարտաւորեցար բանիւք բերանոյ քո,
6 եւ ոչ քննեցեր զբանս հզօրաց"։ Կշտամ-
բեսցէ զքեզ քո բերան՝ եւ ոչ ես, շըր-
թունք քո հակառակ քեզ վկայեսցեն։
7 Իսկ արդ զի՞նչ. միթէ [18]առաջի՞ն քան
զմարդիկ" ծնեալ իցես, կամ յառա՞ջ
8 քան զբլուրս հաստատեցար։ [19]Կամ զհրա-
մանս Տեառն լուա՞ր, թէ ի քե՞զ եհաս
9 իմաստութիւն"։ Զի՞նչ է զոր դու գի-

[1]Եբր. Միթէ զհողմաշարժ տերեւ երկեցուցանե՞ս կամ զչոր ցամաքեալ հալածե՞ս [2]Եբր. զոտս իմ ի կոճեղս եւ դիտեցեր զամենայն շաւիղս իմ [3]Եբր. Եւ նա (մարմին իմ) իբրեւ զերր փտեալ է [4]Եբր. տառապանօք [5]Եբր. Այլ եւ ի վերայ նորա՞ բանաս զաչս քո, և ինձ [6]Եբր. ընդ քեզ [7]Եբր. հանցէ սուրբ յանսրբոյ [8]Եբր. Եթէ սահմանեալ են աւուրք նորա, թիւ ամսոց նորա ընդ քեզ է [9]Եբր. մինչեւ կատարեսցէ զօր իւր [10]Եբր. զամենայն աւուրս զինուորութեան իմոյ, ապասեցից մինչեւ եկեսցէ փոփոխութիւն իմ

[11]Եբր. գործոց ձեռաց քոց ցանկասցիս ։(16)Զի արդ թուեցեր [12]Եբր. կարեցեր ի վերայ անզգամութեան իմոյ ։(18)Արդարեւ լեառն անկեալ կործանի, և վէմ խախտի [13]Եբր. զհող [14]Եբր. Յաղթեցեր նմա [15]Եբր. Փառաւորին որդիք նորա, եւ նա ոչ գիտէ, արհամարհին, եւ նա ոչ իմանայ [16]Եբր. Միթէ իմաստունն տայցէ՞ պատասխանի գիտութեամբ հողմոյ, և լնուցո՞ւ արեւելեան հողմով զորովայն իւր [17]Եբր. Անսաստանդ դու արհամարհես զերկիւղ, եւ խափանես զաղօթս առաջի Աստուծոյ։ (5) Զի ցուցանէ զանօրէնութիւն քո բերան քո, եւ ընտրեցեր զլեզու նենգաւորաց [18]Եբր. առաջի՞ն մարդ [19]Եբր. Միթէ զաղանիս Աստուծոյ եղե՞ր ունկնդիր, եւ պահեցե՞ր քեզ զիմաստութիւն

տեղեկս, եւ մեք ոչ գիտիցեմք. կամ
10 զի՞նչ դու իմանայցես՝ եւ ոչ մեք։ Նա
եւ ի մեզ ծեր եւ հին աւուրց քոյ եւ
երիցագոյն քան զհայր քո աւուրբք։
11 [1]Սակաւս քան զոր մեղացն առնջե-
ցար, եւ առաւել մեծապանս խօսեցար"։
12 Ընդէ՞ր յանդգնեցաւ սիրտ քո, կամ ըն-
13 դէ՞ր լնեցան աչք քո, Զի թափեցեր
զբարկութիւն առաջի Տեառն, եւ հա-
ներ ի բերանոյ քումմէ զբանս այդպի-
14 սիս։ Ա՞ ոք իցէ մարդ որ եղեւ անա-
րատ, կամ ո՞ ոք կանանցածին լինելոց
15 է արդար։ Զի եթէ սրբոց ոչ հաւատայ,
եւ երկինք ոչ են անարատ առաջի նո-
16 րա, Թող թէ այր գարշ եւ անառակ՝
որ ըմպէ զանօրէնութիւնս համօրէն ըմ-
պելեաց։
17 Պատմեցից քեզ, Յոբ, լուր ինձ,
18 զոր ինչ տեսի պատմեցից քեզ. Զոր
իմաստունք ասեն, եւ ոչ թաքուցին
19 [2]հարց իւրեանց։ Նոցա միայն տուաւ
երկիր, եւ ոչ եկն օտարածին ի վերայ
20 նոցա։ Ամենայն կեանք ամպարշտի հո-
գովք. ամք թուով տուեալ են [3]հզօրի.
21 Եւ ահ նորա" յականջս նորա. յորժամ
համարիցի թէ ի խաղաղութեան իցէ,
22 եկեսցէ կործանումն նորա։ Մի՛ հաւա-
տասցէ դառնալ ի խաւարէ, զի հրա-
մայեալ է արդէն ի ձեռս երկաթոյ։
23 [4]Կարգեալ է ի կերակուր անգեղաց. գիտէ
ի միտս իւր՝ թէ մնալոց է ի կործա-
24 նումն։ Օրն մթին զարհուրեցուսցէ զնա,
անձկութիւն եւ նեղութիւն հասցէ նմա՝
իբրեւ զօրավար յառաջակաց կործանե-
25 ալ։" Զի ամբարձ ձեռս ընդդէմ [5]Տեառն,
եւ առաջի Տեառն ամենակալի ընդվզե-
26 ցաւ։ Ընթացաւ առաջի նորա հպար-
տութեամբ, թանձրութեամբ վահանի
27 իւրոյ։ Զի ծածկեաց զերեսս իւր ճար-
պով իւրով, եւ արար [6]երկայրի յաղ-
28 գեր իւրում"։ Բնակեսցէ ի քաղաքս
աւերակս, եւ մտցէ ի տունս [7]անչէնս.
զոր նոքա պատրաստեցին՝ այլք տար-
29 ցին"։ Մի՛ մեծասցի, եւ մի՛ մնասցեն
ինչք նորա, եւ [8]մի՛ արկցէ յերկիր
ստուեր, եւ մի՛ ապրեսցէ ի խաւարէ։
30 Զբողբոջ նորա թառամեցուսցէ հողմ,
31 թօթափեսցի ծաղիկ նորա։ Մի՛ հաւա-
տասցէ՝ թէ համբերեսցէ. սնոտիք սպա-
32 ռնեսցեն նմա" Կորիւն նորա տարա-
ժամ հարցի, եւ շառաւիղ նորա մի՛
33 թխեսցէ։ Իբրեւ զխակախաղն տարա-
ժամ կթեսցի, թօթափեսցի իբրեւ զծա-
34 ղիկ ձիթենւոյ։ [9]Զի վկայութիւն ամ-
պարշտաց մահ է". հուր այրեսցէ զտունս
35 կաշառառուաց։ [10]Յղասցի ցաւս, զի-
ջեսցին նմա սնոտիք. որովայն նորա
կրեսցէ զնենգութիւն։"

## Գլ. ԺԶ

1 Կրկնեալ անդրէն Յոբայ ասէ, (2) Լուայ
այդպիսի ինչ բազումս. [11]մխիթարիչք չա-
3 րեաց ամենեքեան։ Իսկ արդ միթէ կա՞րգ
ինչ իցէ բանից հողմոյ, կամ թէ թա-
խանձիցէ՞ ոք զքեզ՝ զի տացես պատաս-
4 խանի։ Եւ ես ընդ ձեզ խօսեցայց՝ եթէ
հնազանդէր անձն ձեր ըստ իմում ան-
5 ձին։ Արդ զկծեցուցից եւ ես զձեզ բա-
նիւք, շարժեցից եւ ես իբրեւ զձեզ
զգլուխ իմ։
6 Թերեւս լիցի զօրութիւն ի բերան իմ,
զշարժել շրթանց իմոց ոչ խնայեցից։
7 Զի եթէ խօսեցայց՝ ոչ փարատեսցեն ցաւք
վիրաց իմոց, եւ եթէ լռեցից՝ նուա-
8 զագո՞յն ինչ վիրաւորեցից։ Այժմ կատա-

[1] Եբր. Միթէ սակա՞ւ իցեն մխիթարութիւնք Աստուծոյ առ քեզ, եւ բանք քաղցրութեան ընդ քեզ [2] Եբր. ի հարց [3] Եբր. բռնաւորի։ (21) Ձայն երկիւղի [4] Եբր. Յածի նա վասն հացի թէ Ո՞ւր իցէ. գիտէ թէ պատրաստ է ի ձեռին իւրում օր խաւարին։ (24) Զարհուրեցուսցեն զնա անձկութիւն եւ նեղութիւն, յաղթեսցեն նմա իբրեւ թագաւոր պատրաստեալ ի պատերազմ։ [5] Եբր. Աստուծոյ [6] Եբր. պարարտութիւն զերեկամամբք իւրովք [7] Եբր. անշէնս որ փութան ի կործանումն

[8] Եբր. մի՛ տարածեսցի յերկրի լիութիւն նոցա։ (30) Մի՛ դարձցի ի խաւարէ, ցամաքեցուսցէ բոց զոստս նորա, եւ ի շունչ բերանոյ նորա սպառեսցի։ (31) Մի՛ լիցի վստահ ունայնութեան խաբեալ, զի ունայնութիւն եղիցի փոխարէն նորա։ [9] Եբր. Զի ժողով ամպարշտաց ամայասցի [10] Եբր. Յղանան զցաւս, եւ ծնանին զանօրէնութիւն, եւ որովայն նոցա պատրաստէ զնենգութիւն։ [11] Եբր. ողորմելի մխիթարիչք ամենեքեան։ (3) Միթէ իցէ՞ վախճան բանից հողմոյ, կամ զի՞նչ գրգռէ զքեզ զի տայես պատասխանի։ (4) Ես եւս իբրեւ զձեզ խօսէի. եթէ լինէր անձն ձեր փոխանակ անձին իմոյ, գումարէի ի վերայ ձեր բանիւք, և շարժէի ի վերայ ձեր զգլուխ իմ։ (5) Զօրացուցանէի զձեզ բերանով իմով, և շարժումն շրթանց իմոց սփոփէր։

(6) Եթէ խօսեցայց. ոչ սփոփեսցին ցաւք իմ, եւ եթէ լռեցից. զի՞նչ պակասեսցի յինէն։ (7) Սակայն արդ աշխատ արարեր զիս, աւերեցեր զամենայն տուն իմ։ (8) Խորշոմեցուցեր զիս, եղեւ ի վկայութիւն. եւ յարեաւ ընդդէմ ինձ ծիւրութիւն իմ, յերեսս իմ տացէ պատաս-

լեալ արար զիս , փտեալ , ընդարմա-
ցեալ. եւ բուռն հարեալ զինէն ի վկայու-
9 թիւն եղեւ ինձ ։ Եւ յարոյց ինձ զսուտ-
թիւն իմ . քանզի արար ինձ ընդդէմ պա-
10 տասխանի ։ Բարկութեամբ վարեալ կոր-
ծանեաց զիս , կրճտեաց ի վերայ իմ զա-
տամունս . նետք հինից նորա անկանէին
ի վերայ իմ , սրովք աչաց խոցաց ի վե-
րայ իմ. արագ արագ եհար զիս ի ծունկս .
միանգամայն ասպատակեցին ի վերայ
11 իմ ։ Քանզի մատնեաց զիս [1]Տէր ի ձեռս
անիրաւին , եւ ի մէջ ամպարշտաց ընկէց
12 զիս ։ Մինչդեռ ի խաղաղութեան էի ,
քայքայեաց զիս . [2]առեալ զվարսից իմոց
փետեաց զիս . կացոյց զիս իբրեւ դէտ ։
13 Պատեցին զիս տէգք , յանխնայ խոցո-
տեցին զերիկամունս իմ , եհեղ յերկիր
14 զմաղձ իմ ։ Կործանեցին զիս հարուա-
ծովք ի վերայ հարուածոց. յարձակեցան
15 ի վերայ իմ զօրաւորք , Կարեցին քուրձ
ընդ մորթ իմ . զօրութիւն իմ յերկիր
16 շիջաւ ։ Խարշեցաւ փոր իմ ի լալոյ , եւ
ի վերայ արտեւանանց իմոց ստուերք
17 մահու ։ Անիրաւութիւն ինչ ոչ էր ի ձե-
18 ռին իմում , աղօթք իմ սուրբ էին ։ Եր-
կիր , մի ծածկեր զարիւն [3]մարմնոյ ի-
մոյ , եւ մի լիցի տեղի աղաղակի իմոյ ։
19 Եւ արդ ահա յերկինս է վկայն իմ , եւ
20 իրաւաղէան իմ ի բարձունս ։ [4]Հասցեն
խնդրուածք իմ առ Տէր , եւ յանդիման
21 նորա կաթեցուսցէ աչքն իմ ։ Եղիցի յան-
դիմանութիւն առն առաջի Տեառն , եւ
22 որդւոյ մարդոյ առ ընկերի իւրում ։ Ամք
թուով հասին ինձ . ընդ ճանապարհ ան-
դարձ գնացից ։

## Գլ. ԺԷ

1 [5]Հողմավար կորնչիմ , կարօտիմ գերեզ-
2 մանի՝ եւ ոչ հասանեմ ։ Տառապիմ աչ-
3 խատեալ՝ եւ զի՞նչ գործեցից ։ Գողացան
օտարք զստացուածս իմ . ո՞վ է նա ընդ
4 ձեռին իմում կապեսցի ։ Զի զսիրտ իւ-
րեանց թաքուցին յիմաստութենէ , վասն
5 այսորիկ մի՛ բարձրացուսցես զնոսա ։ Ի
մասին իւրում պատմեսցէ զչարութիւնս.
6 աչք իմ ի վերայ որդւոց հալեցան . Եդիր
զիս բամբասանս ազգաց , եղէ նոցա
7 ծաղր ։ Ցլացան ի բարկութենէ աչք իմ ,
զի պաշարեալ եմ մեծապէս յամենե-
8 ցունց ։ Զարմանք կալան զճշմարիտս ի
վերայ այսոցիկ , արդար ի վերայ անօ-
9 րինի յարիցէ ։ Կալցի հաւատարիմն զիւր
ճանապարհ , սուրբն ձեռօք առցէ քա-
10 ջալերութիւն ։ Բայց արդ աղէ դուք ե-
կայք յարեցարուք ամենեքեան , քանզի
11 ոչ գտանեմ ի ձեզ [6]ճշմարտութիւն ։ Ա-
ւուրք իմ անցին շառաչով , պայթեցին
12 երակք սրտի իմոյ ։ Զգիշեր՝ տիւ եդին ,
13 լոյս մերձեալ յերեսաց խաւարի ։ Զի ե-
թէ համբերից՝ դժոխք են տուն իմ , ի
14 մթի տարածեալ են անկողինք իմ ։ [7]Զմահ
կոչեցի ինձ հայր , մայր եւ քոյր ինձ՝
15 զեռն ։ Արդ ո՞ւր է յոյս իմ , կամ թէ
16 զբարութիւնս իմ [8]տեսանիցե՞մ ։ Կամ թէ
ընդ իս իսկ ի դժոխս իջանիցեն , կամ
թէ միանգամայն ի հո՞ղ իջանիցեմք ։

## Գլ. ԺԸ

1 Կրկնեալ անդրէն Բաղդատայ Սաւքեց-
2 ւոյ ասէ , Մինչեւ յե՞րբ ոչ դադարիցես ,
հանդարտեա՝ զի եւ մեք խօսեսցուք ։

---

խանի ։ (9) Բարկութիւն նորա պատառեց, եւ ատեց զիս , կրճտեց ի վերայ իմ ատամունս իր . թշնամին իմ սրէ աչքն իր յիս ։ (10) Բացին ի վերայ իմ զբերանն իւրեանց , եւ ի թշնամանս զարկին այտոյս իմ , միանգամայն գումարեցան ի վերայ իմ ։

[1] Եբր. Աստուած [2] Եբր. կալեալ զպարանոցէ իմմէ ջախջախեաց զիս , կանգնեց զիս իր նպատակ ։ (13) Պատեցին զիս աղեղնաւորք նորա , խոցոտեց զերիկամունս իմ և ոչ խնայէ . հեղու յերկիր զմաղձ իմ ։ (14) Խրամատեաց զիս խրամատ ի վերայ խրամատի . ընթացաւ ի վերայ իմ իբրեւ զօրաւոր ։ (15) Կարեցի քուրձ ընդ մորթ իմ . և արկի զեղջեւր իմ ի հող ։ (16) Երեսք իմ կարմրեցան ի լալոյ [3] Եբր. իմ [4] Եբր. Որ ծաղր առնեն զիս՝ բարեկամք իմ են , առ Աստուած կաթեցուցանէ աչքն իմ ։ (21) Եղէ՛ թէ վիճէր մարդ ընդ Աստուծոյ , որպէս որդի մարդոյ ընդ ընկերի իւրում ։ (22) Զի ամք թուով եկեսցեն , եւ զճանապարհ , ընդ որ ոչ դարձայց այսրէն , գնացից ։

[5] Եբր. Ոգի իմ ապականի . աւուրք իմ շիջանին . գերեզմանն վասն իմ ։ (2) Ո՞չ ապաքէն այպանողք են ընդ իս . ի դրգռութիւնս նոցա զկայ տանուն աչք իմ ։ (3) Աղէ, դիր երաշխաւորութիւն ընդ իս . ո՞վ է որ կալցի զձեռն իմ ։ (4) Զի զսիրտ նոցա թաքուցեր յիմաստութենէ . վասն այնորիկ մի՛ բարձրացուցես զնոսա ։ (5) Որ մասն յինի բարեկամաց վասն աւարի, աչք որդւոց նորա հալեսցին ։ (6) Եւ կացոյց զիս յառակ ժողովրդոց, եւ եղէ ի գարշանս առաջի նոցա ։ (7) Նա եւ շլացան ի տրտմութենէ աչք իմ , եւ ամենայն անդամք իմ իբրեւ ստուեր ։ [6] Եբր. իմաստուն ։ (11) Աւուրք իմ անցին . խափանեցան խորհուրդք իմ, սրտախութիւն [7] Եբր. Զապականութիւն [8] Եբր. ո՞վ տեսցէ ։ (16) Ի դրունս դժոխոց իջցէ, յորժամ ի հող եղիցի հանգիստ ։

3 [1]Ընդէ՞ր իբրեւ չորքոտանիս լռեալ եմք
առաջի քո, եւ դու մինեայ ես բարկու-
4 թեամբ։ Իսկ արդ եթէ դու մեռանիցիս՝
անշէ՞ն մնասցէ առ ի ներքոյ երկնից, կամ
թէ եւ լերինք ի հիմանէ տապալեսցին։
5 Եւ լոյս ամպարշտաց շիջանիցի,
6 եւ ոչ պատահեսցէ նոցա բոց։ Եւ լոյս
նորա խաւար ի յարկի իւրում, եւ ճրագ
7 ի վերայ նորա շիջցի։ [2]Որսասցեն յե-
տինք զինչս նորա. սխալեսցեն խոր-
8 հուրդք նորա։ Անկցի ոտն նորա յորո-
9 գայթ, եւ շաղեսցի ի թակարդի։ [3]Ե-
կեսցեն ի վերայ նորա որոգայթք, զօ-
րասցուսցէ ի վերայ նորա զծարաւիս։
10 Զի թաքուցեալ են յերկրի առուտնք
նորա, եւ կալանք նորա ի վերայ շաւղաց
11 նորա։ [4]Սատակեսցեն զնա ցաւք շուր-
ջանակի, բազումք զաւիւք նորա պա-
12 տեսցեն ի նեղութեան սովոյ։ Պատրաս-
տեալ է նմա կործանումն անհային, կե-
13 րիցեն կինք ոտից նորա։ Կերիցէ մահ-
14 տարաժամ զգեղեցկութիւն նորա. Վա-
րեսցի բժշկութիւն ի յարկաց նորա.
հասցէ նմա տագնապաւ պատուհաս ար-
15 քունի։ Բնակեսցէ ի յարկի նորա ի գի-
շերի իւրում. ցրուեսցին վայելչութիւնք
16 նորա ծծմբով։ Ի ներքուստ արմատք
նորա ցամաքեսցին, եւ ի վերուստ [5]անկ-
17 ցին հունձք նորա։ Յիշատակ նորա կո-
րիցէ յերկրէ, եւ ոչ գտցի անուն նորա
18 [6]առ երեսօք արտաքնովք։ Մերժեսցեն
զնա ի լուսոյ ի խաւար, եւ [7]մի եղիցի
19 նմա ծանօթ ի ժողովրդեան իւրում. Մի՛
լիցի ապրեալ ի ներքոյ երկնից տուն նո-
րա, այլ ի նորայն կեցցեն օտարք։
20 Հեծեծեսցեն ի վերայ նորա յետինք, զա-
21 ռաջինս կալան զարմանք։ Թէ այս են
տունք անիրաւաց, եւ այս տեղի այ-
նոցիկ որք [8]զՏէր ոչ ճանաչիցեն։

## ԳԼ. ԺԹ

1 Կրկնեալ անդրէն Յոբայ ասէ, (2) Մին-
չեւ յե՞րբ աշխատ առնէք զանձն իմ, եւ
3 խախտէք զիս բանիւք. [9]Բայց գիտա-
ջիք զի Տէր արար ընդ իս այսպէս. բամ-
բասէք զիս՝ եւ ոչ ամաչէք յարձակեալ
4 ի վերայ իմ։ Այո, արդարեւ ես մոլո-
րեցայ եւ յիս հանգուցեալ է մոլորու-
թիւն, խօսել բան զոր ոչ է արժան. եւ
բանք իմ մոլորեալ են՝ եւ ոչ են ի դէպ
5 ժամանակի։ Թողցուք զայդ որ յիմ վե-
րայ մեծարանեալ էք, եւ յարձակեալ
6 էք ի վերայ իմ նախատանօք։ Արդ գի-
տասջի՛ք զի Տէր է որ խռովեաց, եւ
7 ամուրս ի վերայ իմ բարձրացոյց։ Եւ
ահա ծաղր լինիմ նախատանօք, եւ ոչ
խօսեցայց. աղաղակեցից՝ եւ ոչ ուստեք
8 իցէ դատաստան։ Շուրջ պատեալ եմ,
եւ ոչ կարացից անցանել. եդ ի վերայ
9 [10]երեսաց իմոց խաւար։ Մերկացոյց յի-
նէն զփառս իմ, վերացոյց զպսակն ի
10 գլխոյ իմմէ։ Պարուրեաց շուրջ զինեւ՝
եւ գնացի, եհատ իբրեւ զծառ զյոյս իմ.
11 Եւ չարաչար բարկութեամբ վարեցաւ
ընդ իս, համարեցաւ զիս իբրեւ զթշնա-
12 մի։ Միաբանեալ հասին ի վերայ իմ
հէնք նորա, [11]զճանապարհս իմ պատեցին
13 դարանակալք։ Հեռի եղեն յինէն եղ-
բարք իմ, ծանեան զօտարս քան զիս։

---

[1] Եբր. Ընդէ՞ր իբրեւ չորքոտանիս համարեցաւք եւ լիցուք անսուրբ (կամ. անմիտ) յաչս ձեր։ (4) Պատառեաց զանձն իւր ի բարկութեան իւրում, միթէ վասն քո թողցի՞ երկիր, եւ փոխիցի՞ ապառաժ ի տեղւոջէ իւրմէ։

(5) Արդարեւ լոյս ամպարշտաց շիջանիցի, եւ ոչ փայլիցէ բոց հրոյ նորա։ [2]Եբր. Գնացք զօրութեան նորա կրեսցեն նեղութիւն, եւ հարցէ զնա զգետնի խորհուրդ նորա։ [3]Եբր. Կալցի զգարշապարէ հողը, զօրասցի ի վերայ նորա ծուղակ։ [4]Եբր. Զարհուրեցուսցեն զնա արհաւիրք շուրջանակի, եւ պնդեսցին զհետ նորա։ (12) Եղիցի սովալլուկ զօրութիւն (կամ. թշուառութիւն) նորա, եւ եղեռն պատրաստ է առ կողն նորա։ (13) Կերիցէ զմորթ մորթոյ նորա, կերիցէ զոյժ նորա անդրանիկն մահու։ (14) Վարեսցի ի խորանէ նորա վստահութիւն նորա, եւ իջուսցի առ թագաւորն զարհուրանաց։ (15) Բնակեսցէ ի խորանի նորա. որ չիցէ նորա. ցանեսցի ծծումբ ի վերայ բնակութեան նորա։ [5]Եբր. հատցին ոստք [6]Եբր. ի հրապարակս [7]Եբր. յաշխարհէ հալածեսցեն զնա։ (19) Ոչ որդի իցէ նորա եւ ոչ թոռն ի ժողովրդեան իւրում, եւ չիցէ մնացորդ ի բնակութիւնս նորա։ (20) Ի վերայ աւուր նորա հիացին յետինք (կամ. արեւմտեայք), եւ առաջինք (կամ. արեւելեայք) զահի հարցին։ [8]Եբր. զԱստուած [9]Եբր. Այս տասն անգամ է զի անարգէք զիս, ոչ ամաչէք զի տագնապեցուցանէք զիս։ (4) Եթէ արդարեւ մոլորեցայ, յիս հանգուցեալ է մոլորութիւն իմ։ (5) Եթէ արդարեւ ամբարտաւանեաջիք ի վերայ իմ, եւ յանդիմանէք ինձ զամօթ իմ։ (6) Այդ գիտասջիք զի Աստուած կործանեաց զիս, եւ ցանցիւ իւրով պաշարեաց զիս։ (7) Ահա աղաղակեմ զանիրաւութենէ, եւ ոչ լինի լսելի. բողոքեմ, եւ ոչ գոյ դատաստան։ [10]Եբր. շաւղաց [11]Եբր. եւ պատրաստեցին ի վերայ իմ զճանապարհ իւրեանց, եւ բանակեցան շուրջ զխորանաւ իմով։ (13) Զեղբարս իմ յինէն հեռա-

14 Բարեկամք իմ անողորմք եղեն, անգըա-
նեցին զիս մերձաւորք իմ, եւ ծանօթք
15 իմ մոռացան զանուն իմ։ Դրացիք՝ տան
իմոյ եւ աղախնայք իմ օտար համարե-
ցան զիս, այլազգի թուէի առաջի նո-
16 ցա։ Զծառայ իմ կոչեցի՝ եւ ոչ լուաւ,
17 [1]բերան իմ աղաչէր։ Եւ աղերսէի զկին
18 իմ։ Կոչէի ողոքանօք զորդիս հարճից
իմոց, եւ նոքա յաւիտեան ուրացան
զիս՝. յորժամ յառնեմ, բամբասեն զիս։
19 Գարշեցան յինէն ծանօթք իմ, եւ զորս
20 ես սիրէի՝ յարեան ի վերայ իմ։ [2]Փտե-
ցան մարմինք իմ ընդ մորթով իմով, եւ
21 ոսկերս իմ ունիմ յատամունս՝ Ողոր-
մեցարուք ինձ, ողորմեցարուք ինձ, ո՛ բա-
րեկամք, զի ձեռն [3]Տեառն մերձեցաւ յիս։
22 Ընդէ՞ր հալածէք դուք զիս [4]իբրեւ զՏէր՝,
եւ մարմնովք իմովք չիցէ՞ք յագեալ։
23 Ո՛ տայր ինձ գրել զբանս իմ, [5]եւ հանել
24 զնոսա ի մատեան յաւիտեան՝. Գրչաւ
երկաթեաւ [6]ի կապարի կամ ի վէմս քան-
25 դակել։ Բանզի գիտեմ զի մշտնջենա-
ւոր է որ լուծանելոցն է զիս յերկրի,
26 Յարուցանել զմորթ իմ որ կրեաց զայս
ամենայն. ի Տեառնէ վճարեցաւ ինձ
27 այս. Զոր ես անձին իմում իրագէտ
եմ, զոր ակն իմ ետես՝ եւ ոչ այլ ոք.
ամենայն ինչ վախճանեցաւ ի ծոց իմ։
28 Ապա թէ ասիցէք, Զի՞նչ խօսեսցուք ա-
ռաջի նորա, եւ արմատ բանից գտցուք
29 ի նմա։ Երկերուք եւ դուք ի ծածկե-
լոյ. զի բարկութիւն ի վերայ անօրի-
նաց եկեսցէ, եւ ապա գիտասցեն թէ
ուր է նիւթ նոցա։՝

ցոյց. եւ ծանօթք իմ օտարացան յինէն։ (14) Լքին զիս մերձաւորք իմ, եւ ծանօթք իմ մոռացան զիս։ (15) Բնակիչք

[1] Եբր. բերանով իմով աղաչէի զնա։ (17) Շունչ իմ օտար էր կնոջ իմում. և աղերս արկանէի որդւոց որովայնի իմոյ։ (18) Նա եւ մանկունք անգոսնեն զիս [2] Եբր. Ի մորթ իմ եւ ի մարմին իմ կցեցան ոսկերք իմ, և զերծայ մորթով ատամանց իմոց։ [3] Եբր. Աստուծոյ [4] Եբր. որպէս Աստուած [5] Եբր. ո՜ տայր հանել զնոսա ի մատեան [6] Եբր. և կապարաւ ի վէմս քանդակել յաւիտեան։ (25) Զի գիտեմ եթէ Փրկիչն իմ կենդանի է եւ ի վախճանի յարիցէ ի հող։ (26) Եւ յետ եղծանելոյ մորթոյ իմոյ այսպէս, ի մարմնոյ իմմէ (կամ, առանց մարմնոյ) տեսից զԱստուած։ (27) Զոր տեսից ես վասն իմ, եւ հայեսցին աչք իմ, եւ ոչ օտարքն. հալին երիկամունք իմ ի ծոց իմ։ (28) Զի ասիցէք Ընդէ՞ր հալածեմք զնա. եւ արմատ բանին գտաւ յիս։ (29) Երկերուք յերեսաց սրոյ, քանզի ցասումն անօրէնութեան սուր է, զի գիտասջիք թէ գոյ դատաստան։

## Գլ. Ի

1 Կրկնեալ անդրէն Սոփփարայ [7]Մինեցւոյ
2 ասէ, Ոչ այսպէս կարծէի խօսել քեզ
ընդդէմ մեր զայդ. ո՞չ ապաքէն իմաստ-
3 նագոյնք իցէք քան զիս։ Խրատու ակ-
նածութեան իմոյ լուայց, եւ ոգի յի-
մաստութենէ արասցէ ինձ պատասխա-
4 նի։ Միթէ զայդ յայսմ հետէ՞ գիտացեր.
այլ յորմէհետէ եղաւ մարդ ի վերայ երկ-
5 րի։ Զի ուրախութիւն ամպարշտաց բե-
կումն անհնարին, եւ խնդութիւն անօ-
6 րինաց՝ կորուստ։ Եթէ ելանիցեն յեր-
կինս պատարագք նորա, եւ զոհք նորա
7 յամպս մերձեսցին։ Յորժամ համարեսցի
թէ հաստատեալ իցէ՝ յայնժամ՝ ի
սպառ կորիցէ, եւ որ գիտէին զնա՝ ա-
8 սասցեն թէ Ո՞ւր է։ Իբրեւ զերազ թռու-
ցեալ ոչ գտցի, թեւեաւ իբրեւ զտեսիլ
9 գիշերական։ Ակն որ հայեցաւ ի նա՝ ոչ
յաւելցէ, եւ ոչ ծանիցէ զնա տեղի իւր։
10 [8]Զորդիս նորա սատակեսցեն վատթարք.
11 ձեռք նորա բորբոքեսցին ցաւովք՝ Ոս-
կերք նորա յագեցին [9]մանկութեամբ
նորա, եւ ընդ նմին ի հող ննջեսցեն։
12 Եթէ քաղցրասցի ի բերան նորա չարու-
թիւն, թաքուսցէ զայն ի ներքոյ լեզուի
13 իւրոյ, Խնայեսցէ ի նա, եւ մի՛ թողցէ
զնա, եւ ժողովեսցէ զնա ի մէջ կոկոր-
14 դի իւրոյ, [10]Եւ մի՛ կարասցէ օգնել ան-
ձին իւրում. լեղի իժի ի փորի իւրում։
15 Մեծութիւն անիրաւութեամբ ժողովեալ՝
փսխեսցի, ի տանէ նորա կորզեսցէ զնա
16 հրեշտակ։ Զարտմտութիւն վիշապաց
17 ծծեսցէ, սպանցէ զնա լեզու օձի։ Մի՛
տեսցէ զկիթ արօտականաց, եւ մի՛ զա-

[7] Եբր. Նաամացւոյ և ասէ, (2) Վասն որոյ խորհուրդք իմ տան ինձ առնել պատասխանի, եւ վասն այսորիկ փութամ. (3) Լուայ կշտամբանս յանդիմանութեան, այլ ոգի իմաստութեան իմոյ տայ ինձ առնել պատասխանի։ (4) Միթէ գիտիցե՞ս զայս, ի յաւիտենից յորմէհետէ եդաւ մարդ ի վերայ երկրի, (5) Զի յաղթութիւն ամպարշտին սակաւաժամանակեան է, եւ ուրախութիւն կեղծաւորին՝ վայր մի։ (6) Եթէ ամբարձցին յերկինս փառք նորա, եւ գլուխ նորա յամպս մերձեսցի, (7) Իբրեւ զաղբ իւր

[8] Եբր. Որդիք նորա խնդրեսցեն շնորհս յաղքատաց, եւ ձեռք նորա դարձուսցեն զինչս նորա։

[2] Կամ, գաղտնեօք [10] Եբր. Հաց նորա յաղիս նորա փոխեսցի, լեղի իժից ի փորի իւրում։ (15) Զմեծութիւն եկուլ, եւ փսխեսցէ զայն. յորովայնէ նորա վարեսցէ զայն Աստուած։ (16) Զթոյն քարբի ծծեսցէ, սպանցէ զնա լեզու իժի։ (17) Մի՛ տեսցէ զվտակս, զգետս հեղե-

18 բոտս մեղու եւ զկողւոյ։ Ի զուր եւ ի
տարապարտուց վաստակեցաւ ի մեծու-
թիւն՝ ուստի ոչ ճաշակեսցէ, իբրեւ
19 զխիստ ինչ զանծամ եւ զանկուտ։ Զի
զբազում տկարաց տունս խորտակեաց,
եւ զյարկս յափշտակեաց եւ ոչ հաստա-
20 տեաց։ Չիք փրկութիւն ստացուածոց
նորա, ի ցանկութեան իւրում ոչ ապ-
21 րեսցի. Եւ մի՛ լիցին մթերք կերակրոց
նորա. վասն այնորիկ մի՛ ծաղկեսցեն
22 բարութիւնք նորա" Յորժամ համարեսցի
թէ ահա լցեալ իցէ՝ նեղեսցի. ամենայն
23 տագնապ հասցէ ի վերայ նորա, [1]Թէ
զփորն" լնուցու որովայն նորա. առա-
քեսցէ ի վերայ նորա զբարկութիւն
բարկութեան, [2]արկցէ զնովաւ ցաւս,
24 Եւ մի՛ ապրեսցի ի ձեռանէ երկաթոյ",
25 խոցոտեսցէ զնա աղեղն պղնձի։ [3]Անցցէ
ընդ մարմինս նորա նետ. աստեղք շրջես-
ցին ի յարկս նորա՝ արհաւիրք ի վերայ
26 նորա։ Ամենայն խաւար նմա մնասցէ,
կերիցէ զնա հուր անշէջ. չարչարեսցէ
27 եկամուտ զտուն նորա"։ Յայտնեսցեն
երկինք զանօրէնութիւն նորա. յարիցէ
28 ի վերայ նորա երկիր։ [4]Քակտեսցէ կո-
րուստ զտուն նորա ի սպառ, հասցէ ի
29 վերայ նորա օր բարկութեան"։ Այս բա-
ժին է մարդոյ ամպարշտի [5]առ ի Տեառ-
նէ, եւ այս ստացուածք ընչից նորա
յԱյցելուէն"։

ԳԼ. ԻԱ

1 Կրկնեալ անդրէն Յոբայ ասէ, (2) Լուա-
րուք, լուարուք բանից իմոց. [6]երանի՛
թէ մի՛ լինէր ի ձէնջ այդ մխիթարու-
3 թիւն"։ Ներեցէք ինձ եւ ես խօսեցայց,
[7]եթէ ոչ այպանիցէք զբանիւք իմովք։
4 Իսկ արդ չեւ իմ կշտամբանքս ի մարդ-
կանէ ինչ իցեն. եւ կամ ընդէ՞ր ոչ բարկա-
5 նայցեմ"։ Հայեցեալ ընդ իս զարմանայք,
6 եդեալ ձեռն ի ծնօտի։ Եթէ յուշ լինիցի
ինձ, տագնապեցայց. զի ունին ցաւք
7 զմարմինս իմ։ Ընդէ՞ր ամպարիշտք
կենդանի իցեն, հնացեալք եւ ի մեծու-
8 թեան են։ Սերմանք նոցա [8]ըստ միտս", եւ
9 որդիք նոցա առաջի աչաց։ Տունք նոցա
աջողեալք, եւ երկեւղ եւ ոչ ուստեք,
եւ տանջանք [9]ի Տեառնէ չեն ի վերայ
10 նոցա։ Արջառ նոցա ոչ սխալեաց ի ծննդե-
նէ, ապրեցաւ յղի նոցա՝ եւ ոչ վրիպեցաւ։
11 [10]Եւ կան իբրեւ զխաշինս յաւիտենականս։
12 Մանկունք նոցա խաղան առաջի առեալ"
սաղմոսարան եւ քնար, եւ ուրախ լի-
13 նին ձայնիւ երգոց։ Կատարեցին ի բա-
րութեան զկեանս իւրեանց, [11]հանգըս-
14 տեամբ ննջեցին ի դժոխս։ Եւ [12]ասէ
ցՏէր, Ի բաց կաց յինէն", զճանապարհս
քո ճանաչել ոչ [13]կամիմ։
15 [14]Զի՞նչ չահ է" զի ծառայեսցուք նմա, կամ
զի՞նչ օգուտ՝ զի [15]հանդիպեսցուք նմա։
16 Ի ձեռս նոցա էին բարութիւնք, եւ ի
17 գործս ամպարշտաց ոչ հայի։ Սակայն
եւ" ճրագ ամպարշտաց շիջցի. եկեսցէ
ի վերայ նոցա կործանումն, երկունք
18 կալցին զնոսա ի բարկութենէ։ Եղիցին
իբրեւ զյարդ առաջի հողմոյ, կամ իբ-
19 րեւ զփոշի զոր տարաւ մրրիկ։ [16]Սպա-
ռեսցեն զորդիս ինչք նորա, հատուսցէ
20 նմա եւ ծանուսցէ։ Տեսցեն աչք նորա
զսպանումն իւր, եւ ի Տեառնէ մի՛ ապ-
21 րեսցի։ Զի կամք նորա ի տան իւրում

---

զոց մեղու եւ կոգւոյ։ (18) Դարձուսցէ զաշխատութիւն եւ մի՛ կլցէ. ըստ մեծութեան զոր ստացաւ, մի՛ խնդասցէ։ (19) Քանզի հարըստահարեաց, եւ անտես արար զաղքատն, յափշտակեաց տուն, եւ մի՛ շինեսցէ զայն։ (20) Զի ոչ գիտաց խաղաղութիւն յանձին իւրում. զոր ցանկացաւն՝ մի՛ ապրեցուսցէ։ (21) Ո՛չ ինչ մնացէ նմա յուտել. վասն այնորիկ յաջողութիւն նորա մի՛ տեւեսցէ։

[1] Եբր. Իբրեւ [2] Եբր. տացէ տեղալ ի վերայ նորա յուտել իւրում։ (24) Փախիցէ ի զինուց երկաթոյ [3] Եբր. Ձգեաց, եւ ել ի մարմնոյն. արձակեսցի շողիւն (լեարդ, տէգ, սուր) ի մաղձէ նորա. ի վերայ նորա արհաւիրք։ (26) Ամենայն խաւար թաքիցէ ի ծածուկս նորա. կերիցէ զնա հուր ոչ փչեալ. սպառիցէ զմնացեալն ի վրանի նորա։ [4] Եբր. Մեկնեսցի հաս տան նորա. անցցէ յաւուր բարկութեան։ [5] Եբր. յԱստուծոյ, և ժառանգութիւն սահմանեալ յԱստուծոյ։ [6] Եբր. եւ եղիցի այս մխիթարութիւն ձեր

[7] Եբր. եւ յետ խօսելոյ իմոյ այպանիցէք։ (4) Միթէ առ մա՞րդ իցէ տրտունջ իմ, եւ ընդէ՞ր ոչ տխրեսցի անձն իմ [8] Եբր. կայուն առաջի նոցա ընդ նոսա. [9] Եբր. յԱստուծոյ [10] Եբր. Արձակեցին իբրեւ զխաշինս զմանկունս իւրեանց, աղջիկք նոցա խայտան։ (12) Առեալ [11] Եբր. յականթօթափել [12] Եբր. ասեն զԱստուած՝ Ի բաց կաց ի մէնջ [13] Եբր. կամիմք [14] Եբր. Ո՞վ իցէ Ամենակալն [15] Եբր. յաղօթս կացցուք առ նա։ (16) Ահա չեն ի ձեռս նոցա բարութիւնք նոցա, խորհուրդ ամպարշտին հեռի լիցի յինէն։ (17) Քանի՞ցս [16] Եբր. Աստուած յաւելցէ յորդիս նորա զանիրաւութիւն նորա, հատուսցէ նմա, եւ գիտասցէ։ (20) Տեսցեն աչք նորա զհարուած իւր, եւ ի ցասմանէ Ամենակալին արբցէ։ (21) Զի զի՞նչ ուրախութիւն իցէ ի տան նորա յետ նորա, մինչ

ընդ իւր, եւ զթիւ ամսոց նորա բաժա-
22 նեսցեն։ Ո՞չ ապաքէն Տէր է որ ուսու-
ցանէ զհանճար եւ զգիտութիւն, զի ինքն
23 քննէ զիմաստունս։ Այնպիսին մեռցի ի
սաստկութիւն անզգամութեան իւրում,
ամենեւին բարեկեցիկն եւ յաջողեալն։
24 Փորն նորա լի է ճարպով, ուղիղ նորա
25 չճեսցէ։ Նա վախճանեսցի ի դառնու-
թենէ անձին, ոչ ինչ կերեալ ի բարու-
26 թենէ։ Առ հասարակ ննջեսցեն յերկրի.
երր ծածկեաց զնոսա։
27 ¹Եւ արդ գիտեմ՝ զի յանդգնութեամբ
28 հասեալ էք ի վերայ իմ"։ Այդ ասացէք՝
թէ Ո՞ւր է տուն իշխանին. եւ ո՞ւր է յարկ
29 բնակութեան ամպարշտաց։ ²Հարցէք
զանցաւորս ճանապարհի, եւ զնշանս
30 նոցա ³մի՛ օտարացուցանէք"։ Զի յօր
կորստեան ապրի չար, յօր բարկութեան
31 իւրոյ վարեսցի։ Ո՞ պատմեսցէ յանդի-
ման նորա զճանապարհս նորա, եւ զոր
ինչ ինքն գործեաց՝ ո՞ հատուսցէ նմա։
32 Եւ ինքն ի գերեզմանս գնաց, եւ ի տապա-
33 նի արթնեաց։ Եւ քաղցրացան նմա խիճք
հեղեղատի. եւ զհետ նորա ամենայն
մարդ գնասցէ, եւ յառաջ քան զնա ան-
34 թիւք։ Եւ զիա՞րդ մխիթարեցէք զիս
սնոտեօք, ⁴եւ ինձ ձեւք դադարելն ոչ
ինչ է"։

ԳԼ. ԻԲ

1 Կրկնեալ անդրէն Եղիփազու Թեմնաց-
2 ւոյ ասէ, ⁵Ո՞չ ապաքէն Տէր է՝ որ ու-
սուցանէ զիմաստութիւն եւ զհանճար"։
3 Իսկ արդ զի՞ փոյթ է ⁶Տեառն, եթէ դու
էիր անարատ գործովք քովք, կամ զի՞նչ
օգուտ է թէ պարզեսցես զճանապարհս
4 քո։ Կամ համարեալ ինչ զքեզ յանդի-
մանեսցէ՞ զքեզ, եւ մտանիցէ՞ ընդ քեզ
5 ի դատաստան։ Ո՞չ ապաքէն չարութիւն
քո բազում է, եւ անթիւ են մեղք քո։

6 Գրաւեցեր զաւ զեղբարս քո տարապար-
7 տուց, եւ զզգեստ մերկոց զերծեր։ Ջուր
ծարաւեաց ոչ արբուցեր, այլ եւ զհաց
8 քաղցելոց հատեր։ ⁷Այն առեր երեսաց
ոմանց, եւ բնակեցուցեր զնոսա յերկ-
9 րի։ Արձակեցեր զայրիս ունայնս, եւ
10 զորբս չարչարեցեր"։ Եւ արդ պատեցան
զքեւ որոգայթք, եւ տագնապեաց զքեզ
11 պատերազմ անհնարին։ ⁸Լոյսն քո քեզ
խաւար գտելցաւ, եւ ի քուն ծածկեաց
12 զքեզ ջուր։ Միթէ որ ի բարձունս նայի՝
ո՞չ տեսանիցէ. Նա աւանիկ զզգածեալսն
ամբարտաւանութեամբ խոնարհեցոյց"։
13 Եւ ասացեր թէ զի՞ ծանեաւ Հզօրն, կամ
14 թէ ի միգի՞ դատիցի։ Ամպ ծածկութիւն
նորա, եւ ոչ ⁹երեւեսցի, եւ ընդ ծիր
15 երկնից շրջեսցի։ Մի՞ զշաւիղս յաւիտե-
նականս պահեսցես, զորս ¹⁰կոխեցին
16 արք արդարք"։ Որք յափշտակեցան տա-
րաժամ, Գետ ¹¹ըղխեալ հիմունք նոցա.
17 Որք ասէին՝ Զի՞ արասցէ մեզ Տէր, կամ
զի՞նչ ածցէ ի վերայ մեր Ամենակալն"։
18 Եւ Նա ելից զտունս նոցա բարութեամբ.
բայց խորհուրդ ամպարշտաց հեռի ¹²է ի
19 Նմանէ"։ Տեսեալ արդարոց ծիծաղեցան,
20 անարատին՝ եւ արհամարհեաց։ ¹³Եթէ
չէ՞ր ապականեալ հաստատութիւն նո-
ցա". եւ զմնացորդս նոցա կերիցէ հուր։
21 Բայց ազէ լեր ¹⁴խիստ՝ եթէ ժուժկալես-
ցես, եւ եթէ" պտուղ քո եղիցի ի բա-
22 րութիւնս։ Ընկալ ի բերանոյ նորա դա-
ւանութիւն, եւ ա՛ռ զբանս նորա ի սիրտ
23 քո։ Եւ եթէ դարձցիս ¹⁵եւ խոնարհե-
ցուսցես զանձն քո առաջի Տեառն,"
հեռի արարեր ի յարկէ քումմէ զանի-
24 րաւութիւն ¹⁶Նստցիս յամրութիւն վի-
մի, եւ իբրեւ ի վէմ ձորոյն Սոփերայ։
25 Եւ եղիցի Ամենակալն օգնական քեզ ի

---

թիւ ամսոց նորա հատեալ է։ (22) Միթէ իցէ՞ հնար ուսուցանել գիտութիւն Աստուծոյ, զի ինքն զբարձունս դատի։ (23) Սա մեռանի ի կատարեալ զօրութեան իւրում, ամենեւին հանդարտ եւ խաղաղ. (24) Կողք նորա լի են ճարպով (կամ, Անօթք նորա լի են կաթամբ), եւ ուղիղ ոսկերաց նորա դալար է։

¹Եբր. Ահա գիտեմ զխորհուրդս ձեր, և զհնարս զոր խորհիք հակառակ ինձ ²Եբր. Ո՞չ հարցանէք ³Եբր. ո՞չ իմանայք ⁴Եբր. զի ի պատասխանիս ձեր կայ միայն նենգութիւն ⁵Եբր. Միթէ իցէ՞ օգտակար Աստուծոյ այր. օգտակար է անձին իւրում իմաստունն ⁶Եբր. Ամենակալին

⁷Եբր. Սակայն առն զօրաւորի է երկիր, եւ որ պատուականն է՝ բնակէ ի նմա։ (9) Արձակեցեր զայրիս ունայնս և բազուկք որբոց խորտակեցան։ ⁸Եբր. Կամ խաւար՝ ոչ տեսցես, և յաճախութիւն ջրոց ծածկեսցէ զքեզ։ (12) Չիցէ՞ Աստուած ի բարձրութեան երկնից. արդ հայեաց ի գագաթն աստեղաց, քանի՜ն բարձր են։ ⁹Եբր. տեսանէ ¹⁰Եբր. կոխեցին արք անիրաւութեան ¹¹Եբր. յորդեաց ի հիմունս նոցա. (17) Որք ասէին ցԱստուած, Ի բաց գնա ի մէնջ. եւ զի՞նչ արասցէ մեզ Ամենակալն։ ¹²Եբր. լիցի յինէն ¹³Եբր. Ո՞չ ապաքէն կորեան հակառակորդք մեր ¹⁴Եբր. հաշտ ընդ նմա, եւ ի խաղաղութեան. ոգիմբք ¹⁵Եբր. առ Ամենակալն, շինեսցիս. ¹⁶Եբր. Եւ դիցես ի հող զգանձն, եւ ի քարինս հեղեղաց՝ զոսկին Սոփերայ. (25) Եւ եղիցի Ամենակալն գանձ քո, և արծաթ զօրութեան քեզ։

թշնամեաց, եւ յստակ հատուսցէ քեզ
26 իբրեւ զարծաթ զտեալ։ Ապա համար-
ձակեսցիս առաջի Տեառն, հայեցեալ
27 յերկինս զուարթութեամբ՝՝ Յաղաչել
քում առ նա լուիցէ քեզ, տացէ քեզ
28 հատուցանել [1]զաղօթս քո։ Դարձուսցէ
զքեզ յարկն արդարութեան՝՝, եւ ի ճա-
29 նապարհս քո եղիցի լոյս։ [2]Զի խոնար-
հեցուցեր զանձն եւ ասացեր՝ թէ Ամ-
բարտաւանեցի. եւ զխոնարհս աչօք՝
30 կեցուսցէ, Նա փրկեսցէ զանարատն, եւ
ապրեսցիս՝՝ սրբութեամբ ձեռաց քոց։

## ԳԼ. ԻԳ

1 Կրկնեալ անդրէն Յոբայ ասէ, (2) [3]Նա
եւ ես գիտեմ զի ի ձեռանէ իմմէ է յան-
դիմանութիւն իմ, եւ ձեռն նորա ծան-
3 րացաւ ի վերայ հեծութեան իմոյ։ Իսկ
ո՞վ ծանուսցէ ինձ թէ գտից զնա, եւ հա-
4 սից նմա ի սպառ՝՝ Եւ ասացից առաջի
նորա զիրաւունս, լցից զբերան իմ յան-
5 դիմանութեամբ։ Ծանեայց զողոքանս
զոր ընդ իս խօսիցի, խելամուտ եղէց
6 այնմ զոր ինձն պատմիցէ։ [4]Եւ բազում
զօրութեամբ եկեսցէ ի վերայ իմ, եթէ
զպատուհաս իւր ի գործ ոչ արկանիցէ։
7 Զի ճշմարտութիւն եւ յանդիմանութիւն
ի նմանէ է, հանցէ ի սպառ զիրաւունս
8 իմ։ Եթէ յառաջագոյն երթայց՝ ոչ եւս
9 լիցիմ, եւ զվերջինն զի՞ գիտիցեմ։ Զձախ
այնորիկ որ արարն զնա՝ ոչ կալայ, եւ
եթէ արկցէ զաջ իւր զինեւ՝ սակայն եւ
10 այնպէս ոչ տեսից։ Զի ինքն գիտէ զճա-
նապարհս իմ, եւ քննեաց զիս իբրեւ
11 զոսկի։ Հասից ի պատուիրանս նորա,
զճանապարհս նորա պահեցից եւ ոչ եւս
12 թիւրեցայց։ Զպատուիրանօք նորա ոչ
անցից՝ զի մի՛ մեռանիցիմ, ի ծոց իմ
13 թաքուցից զբանս նորա։ Ապա թէ նա
այնպէս դատեցաւ, ո՞ իցէ որ ընդդէմ դառ-
նայցէ նմա. զի զոր ինքն կամեցաւ՝ եւ
14 արար։ Վասն այնորիկ առ նա փութա-
15 ցայց, խրատեալ՝ զնորին հոգացայց՝՝ Ի
վերայ այսորիկ յերեսաց նորա տագնա-
պեցայց, եւ ի միտ առից եւ զարհուրե-
16 ցայց ի նմանէ։ Զի [5]Տէր հիւանդացոյց՝՝
զսիրտ իմ, եւ Ամենակալն տագնա-
17 պեաց զիս։ [6]Զի ոչ գիտէի թէ գայցէ ի
վերայ իմ խաւար, առաջի երեսաց իմոց
ծածկեաց մէգ՝՝

## ԳԼ. ԻԴ

1 [7]Ընդէ՞ր զՏէր մոռացան ամբարհաւաճք,
2 Եւ ամպարիշտք անցին ըստ սահման.
զհօտ հանդերձ հովուօք յափշտակեցին,
3 Զէշ որբոյն վարեցին, եւ զեզն այրւոյն
4 գրաւեցին։ Խոտորեցուցին զտկարս ի
ճանապարհէ արդարութեան, առ հա-
սարակ զօղեցուցին զհեզս երկրի, զի-
5 պեցան իբրեւ զցիռս ի վայրի։ Վասն
իմ ծախեցին զգործ իւրեանց, քաղցրա-
6 ցաւ նոցա հաց ընդ լկտիս։ Զանդ ահա
որ ոչ իւրեանց էր՝ հնձեցին, ակարք
զայգիս ամպարշտաց անհաց եւ անվարձ
7 գործեցին։ Զմերկս բազումս ննջեցու-
ցին առանց հանդերձից, զզգեստ ան-
8 ձանց նոցա զերծին։ Ի ցօղոյ լերանց

---

(26) Զի յայնժամ ուրախ լինիցիս յԱմենակալն, եւ համբարձցիս առ Աստուած զերեսս քո։

[1] Եբր. զուխտս քո։ (28) Եւ զոր ինչ դիցես ի մտի, յաջողեսցի քեզ [2] Եբր. Յորժամ խոնարհեցուսցեն զքեզ, ասիցես, Բարձրութիւն. և զխոնարհս աչօք կեցուսցէ։ (30) Փրկեսցէ զանարդարն իսկ, և փրկեսցի [3] Եբր. Այսօր եւս դառն է տրտունջ իմ, ձեռն իմ ծանրացեալ է ի վերայ հեծութեան իմոյ։ (3) Ո՛ տայր թէ գիտէի եւ գտանէի զնա, երթայի մինչեւ յաթոռ անդր նորա։ [4] Եբր. Միթէ բազում զօրութեամբ կռուեսցի՞ ընդ իս. ոչ. սակայն նա անսայր ինձ։ (7) Անդ արդարն վիճէր ընդ նմա, եւ լինէի ազատ յաւիտեան ի Դատաւորէն իմմէ։ (8) Ահա երթամ յառաջ, եւ ոչ է նա. եւ յետկոյս՝ եւ ոչ նշմարեմ զնա։ (9) Եթէ ի ձախ երբայց՝ ուր գործէ նա, ոչ գիտեմ. ծածկի յաջ եւ ոչ տեսանեմ։ (10) Զի ինքն գիտէ զճանապարհս իմ. եթէ փորձէ զիս, իբրեւ զոսկի ելանեմ։ (11) Ի գնացս նորա հաստատեցաւ ոտն իմ, զճանապարհս նորա պահեցի, եւ ոչ խոտորեցայ. (12) Զպատուիրանս շրթանց նորա ոչ թողից. քան զօրէնս իմ պահեցի զբանս բերանոյ նորա։ (13) Եւ նա ի մի միտս է, եւ ո՞ դարձուսցէ զնա. եւ անձն նորա ցանկացաւ, եւ արար։ (14) Արդարեւ կատարեսցէ զօրէնս որ զինէն, եւ իբրեւ զայս բազում ինչ առ նմա։ [5] Եբր. Աստուած նուաղեցոյց [6] Եբր. Զի ոչ կորեայ յառաջ քան զխաւար, եւ ոչ յերեսաց իմոց ծածկեաց մէգ։

[7] Եբր. Ընդէ՞ր յԱմենակալէն չեն ծածկեալ ժամանակք, եւ ընդէ՞ր որք գիտենն զնա՝ ոչ տեսանեն զաւուրս նորա։ (2) Զսահմանս փոփոխեն, զհօտս յափշտակեն, եւ արածեն։ (3) Զէշ որբոց վարեն, առնուն ի գրաւ զեզն այրւոյն։ (4) Խոտորեցուցանեն զաղքատս ի ճանապարհէ, ի միասին թաքչին աղքատք երկրի։ (5) Ահա իբրեւ զցիռս յանապատի ելանեն ի գործ իւրեանց, փութապարոյց յորսանապատ տայ նոցա՝ հաց վասն մանկանց։ (6) Հնձեն զանդ որ չէ նոցա, եւ անիրաւութեամբ կթեն զայգի։ (7) Զմերկն ագուցին առանց հանդերձի. եւ առանց ծածկութի ի ցրտութեան։ (8) Ի հեղեղաց լերանց թամկանան, եւ

տամկանան. քանզի ոչ գոյր նոցա յարկ.
9 արկին զինքեանս ընդ վիմաւ։ Յա-
փըշտակեցին զորբն ի ստեանէ, եւ զան-
10 կածն տառապեցուցին։ Զմերկն ննջե-
ցուցին առանց հանդերձի տարապար-
11 տուց, հացին զհաց քաղցելոց։ Յան-
ձուկս զարանակալ եղեն ի տարապար-
տուց, զճանապարհս արդարութեան ոչ
12 գիտացին։ Որք ի քաղաքաց եւ ի տանց
իւրեանց զրկեցան, անձինք տղայոց մե-
ծամեծս հեծեծեցին. եւ նա այնմ այ-
13 ցելութիւն ընդէ՞ր ոչ առնիցէ։ Յերկրի
էին նոքա՝ եւ ոչ ծանեան. զճանա-
պարհս արդարութեան ոչ գիտացին, եւ
14 ընդ շաւիղս նորա ոչ գնացին։ Ծանուց-
եալ զգործս նոցա՝ մատնեաց զնոսա ի
խաւար, եւ զցայգ եղիցին իբրեւ գողս։
15 Եւ աչք շնացելոյն սպասեցին զխաւար,
եւ ասիցէ" թէ Ոչ զակնիցէ զիս ակն.
16 եւ քող արկ զերեսօք իւրովք։ [1]Փորեաց
ընդ մութ զտուն իւր. ի տուէ կնքե-
ցին զանձինս, եւ ոչ ծանեան զլոյս։
17 Եթէ միանգամայն առաւօտ նոցա ի
ստուերս մահու է, եթէ ի միտ առնու-
ցու զխռովութիւն ստուերաց մահու։"
18 Թեթեւագոյն է ի վերայ ջուրցն երե-
սաց. [2]կործանեսցի մասն նոցա ի վերայ
երկրի, [3]երեւեսցի տունկ նոցա ի վերայ
19 ցամաք երկրի։ Զի զանթանոցիկ որ-
բոյն յափշտակեցին. ընդդէմ յիշատա-
կեցան նմա մեղք, իբրեւ զմառախուղ
20 ցօղոյ եղեւ անյայտ։ Հատուսցի նմա
որ ինչ արարն. խորտակեսցի ամենայն
անիրաւ հանգոյն փայտի անբժշկականի
21 Զի ամլոյն բարի ոչ արար, եւ ամուր-
22 ւոյն ոչ ողորմեցաւ։ Արտմութեամբ
կործանեաց զտկարս. եւ թէպէտ եւ
յարիցէ, մի՛ հաւատասցէ կենաց իւրոց։
23 Հիւանդացեալ՝ եւ մի՛ ակն կալցի ողջա-
նալոյ, այլ անկցի ախտիւ. զի զբա-
զումս չարչարեաց բարձրութիւն նորա։
24 Թարշամեսցի իբրեւ զբանջար ի տօթի,
կամ իբրեւ զհասկ ինքնին անկեալ ի
25 յօղնոյ։ Ապա թէ իցէ ոք որ ասիցէ
զինէն՝ սուտ խօսել, զիցէ զբանս իմ
յոչինչ։"

## Գլ. ԻԵ

1 Կրկնեալ անդրէն Բաղդատայ Սաւքեց-
2 ւոյ ասէ, [4]Իսկ արդ առա՞կ ինչ իցէ ահն
առ ի նմանէ, որ առնէ զամենայն ինչ
3 ի բարձունս։ Մի՛ ոք կարծեսցէ թէ
զուցէ յապաղումն հինից նորա. յո՞յր
վերայ ոչ եկեսցէ դարանակալութիւն
4 առ ի նմանէ։" Զիա՞րդ լինիցի մարդ ար-
դար առաջի [5]Տեառն, կամ ո՞վ սրբեսցէ
5 զանձն իւր ի կանանցածնաց։ [6]Զի եթէ
լուսնի հրամայեսցէ, եւ ոչ ծագէ". եւ
աստեղք ոչ են սուրբ առաջի նորա.
6 Թող թէ մարդ երր, եւ որդի մարդոյ
որդն.

## Գլ. ԻԶ

1 Կրկնեալ անդրէն Յոբայ ասէ, (2) [7]Յո՞
մօտիցիս, կամ ո՞ւմ օգնական լինելոց
իցես. ո՞չ ապաքէն այնմ որոյ բազում
է զօրութիւն, եւ որոյ հզօր է բազուկ
3 իւր։ Ընդ ո՞ւմ խորհրդակից լինիցիս.

---

առանց ապաստանի գիրկս արկանեն վիմաց։ (9) Յափշտակեն զորբն ի ստեանէ, եւ զաղքատին տանուն գրաւ։ (10) Զմերկն շրջեցուցանեն առանց հանդերձի, եւ քաղցելոց կրեն զորայ։ (11) Ի մէջ որմոց նոցա մզեն ձէթ, հնձանս հարկանեն, եւ ծարաւին։ (12) Ի քաղաքաց արք հեծեն, եւ անձն վիրաւորելոց ճչէ, եւ Աստուած չհամարի անզգամութիւն։ (13) Նոքա են յապստամբաց լուսոյ, ոչ գիտեն զճանապարհս նորա, և ոչ կան ի շաւիղս նորա։ (14) Ընդ լուսանալն ելանէ սպանող. սպանանէ զաղքատն եւ զանանկ, եւ ի գիշերի եղիցի իբրեւ գող։ (15) Եւ աչք շնացելոյն սպասեն խաւարի, և ասէ

[1]Եբր. Ակն հատանէ ի խաւարի զտանց, զոր ի տուընջեան դրոշեցին. և ոչ ծանեան զլոյս (17) Զանզի առ հասարակ այգ ստուեր մահու է նոցա, զի գիտեն զարհաւիրս ստուերի մահու։

[2]Եբր. անիծեալ լիցի [3]Եբր. ոչ դառնայ ի ճանապարհ այգեաց։ (19) Ցամաքութիւն և տօթ յափշտակեն զջուրս ձեան, գերեզման զմեղուցեալս։ (20) Մոռասցի զնա ողորմութիւն (կամ. որովայն). կերիցէ զնա քաղցրութեամբ որդն, ոչ եւս յիշեսցի, եւ խորտակեսցի իբրեւ ծառ անիրաւութիւն։ (21) Տանջէ զամուլն որ ոչ ծնաւ, եւ այրւոյն չառնէ բարութիւն։ (22) Ձգէ զհզօրս զօրութեամբ իւրով, յառնէ նա եւ չիք ապահովութիւն կենաց։ (23) Եւ տա նմա ապահովութիւն, եւ վստահ լիցի ի նա, եւ աչք նորա ի վերայ ճանապարհաց նոցա։ (24) Բարձրացան սակաւիկ մի, եւ եղեն յոչինչ. եւ խոնարհեցան, որպէս զամենեսին՝ կորեան. եւ իբրեւ զգլուխ հասկի հատան։ (25) Եթէ չիցէ այսպէս, ո՞վ արասցէ զիս սուտ, եւ համարեսցի ոչինչ զբանս իմ։

[4]Եբր. Իշխանութիւն եւ երկեւղ են առ նմա, առնէ խաղաղութիւն ի բարձունս իւր։ (3) Գուցէ՞ թիւ զօրաց նորա, եւ յո՞յր վերայ ոչ ծագէ լոյս նորա։ [5]Եբր. Աստուծոյ [6]Եբր. Ահա եւ լուսին ոչ տայ լոյս [7]Եբր. Զիա՞րդ օգնեցեր անզօրին, զիա՞րդ ապրեցուցեր զբազուկ որոյ չիք զօրութիւն։ (3) Զի՞նչ խրատ ետուր անմտին, և ո՞րչափ իմաստութիւն ցուցեր։

ո՞չ ընդ այնմ որոյ ամենայն իմաստու-
թիւն է. զո՞յր գնա երթիցես, եթէ ոչ
4 որոյ մեծ է զօրութիւն՝՝ Ո՞ւմ պատմե-
ցեր բան, եւ ո՞յր շունչ ել ի քէն։
5 [1]Միթէ սկայք ծնանիցին ի ներքուստ
6 ջրոյ, եւ ի դրացեաց նորա՝՝ Մերկ են
գժոխք առաջի նորա, եւ չիք զգեստ
7 կորստեան։ Ձգեաց զհիւսիսի զոչինչ,
8 կախեաց զերկիր ի վերայ ոչնչի։ Ծրարէ
զջուրս յամպս իւր, եւ ոչ պատառեցաւ
9 մէգ ի ներքոյ նորա։ Որ ունի զերեսս
աթոռոյ, թաւալանէ զնովաւ զմէգ իւր։
10 [2]Հրաման պատեաց՝՝ զերեսօք ջրոյ՝ մինչ
11 ի վախճան լուսոյ ընդ խաւարի։ Սիւնք
երկնից թռեան եւ զարհուրեցան ի սաս-
12 տէ նորա։ Զօրութեամբ հանդարտեցոյց
զծով, իմաստութեամբ [3]նորա տարած-
13 եալ է համատարածն։ Սգխք երկնից
սարսեցին ի նմանէ. հրամանաւ իւրով
14 սպան զվիշապն ապստամբ՝՝ Ահա այս
է մասն ճանապարհի նորա. եւ [4]տակա-
ւին զշիթս բանից նորա լուիցուք նո-
վաւ՝՝ զզօրութիւն որոտման նորա ո՞
գիտէ՝ յորժամ առնիցէ։

ԳԼ. ԻԷ

1 Դարձեալ յաւելեալ Յոբայ յառակի իւ-
2 րում ասէ, Կենդանի է [5]Տէր որ այս-
պէս դատեցաւ զիս, եւ Ամենակալն՝
3 որ դառնացոյց զանձն իմ։ Եթէ տակա-
ւին իցէ յիս շունչ իմ. եւ հոգի աս-
4 տուածեղէն շուրջ զինեւ յռնգունս, Ոչ
խօսեսցին շրթունք իմ անօրէնութիւն,
եւ ոչ [6]անձն իմ խորհեսցի անիրաւու-
5 թիւն՝՝։ Մի՛ լիցի ինձ ասել զձեզ ար-
դարս. մինչեւ մեռանիցիմ ոչ փոխեցից
6 զանմեղութիւն իմ։ Արդարութեան մն-
ացեալ՝ եւ ոչ մեկնեցայց, զի ոչ գի-
տեմ զանձին գործեալ զանպատեհս։
7 [7]Սակայն թէեւ էին թշնամիք իմ իբ-
րեւ զկործանումն ամպարշտաց, եւ յա-
րուցեալքն ի վերայ իմ իբրեւ զկորուստ
8 անօրինաց՝՝ Եւ զի՞նչ է յոյս ամպարշտի,
[8]զի յեցեալ կայցէ. վստահացեալ ի Տէր
9 թերեւս ապրիցէ՞՝՝ Կամ թէ ինդրուա-
ծոց նորա լուիցէ՞ [5]Տէր. եթէ՝՝ ի հասա-
10 նել ի վերայ նորա տագնապի, [9]Ոչ ու-
նիցի համարձակութիւն առաջի նորա.
կամ ի կարդալ նորա առ նա՝ լուիցէ՞
11 նմա՝՝ Այլ պատմեցից ձեզ զինչ է ի
ձեռին [10]Տեառն, եւ որ իցէ յԱմենակա-
12 լին, ոչ [11]ստեցից։ Ահաւասիկ ամենե-
քին իսկ գիտէք, զի՞ սնոտիս ընդունայնք
13 պատէք։ Այս մասն է մարդոյ ամպարշտի
[12]ի Տեառնէ, ստացուած հզօրաց եկեսցէ
14 ի վերայ նորա յԱմենակալէն՝՝ Զի եթէ
բազում ծնանիցին նմա որդիք՝ ի սպա-
նումն եղիցին, եւ [13]եթէ յիրիմաստար-
դութիւն հասանիցեն՝ մուրացիկ շրջես-
15 ցին՝՝ Եւ որ զնովաւն իցեն՝ մահուամբ
վախճանեսցին, [14]այրեաց նոցա մի՛ ող-
16 որմեսցի՝՝։ Եւ եթէ ժողովեսցէ իբրեւ
զհող զարծաթ, եւ հանդոյն կաւոյ
17 պատրաստեսցէ [15]զոսկի, Զայն ամենայն
արդարք ստասցին, եւ զինչս նորա
18 ճշմարիտք կալցին։ Եղեւ տուն նորա
իբրեւ զցեց եւ իբրեւ [16]զսարդիոստայն։
19 Մեծատուն ննջեաց՝ եւ ոչ եւս յաւելցէ
յառնել, զաչս իւր եբաց՝ եւ ոչ եւս
20 իցէ։ Պատահեցին նմա իբրեւ զջուր
ցաւք, վիշերի ծածկեաց զնա մութ։
21 Առցէ զնա խորշակ եւ գնասցէ, եւ
22 հանեսցէ զնա ի տեղւոջէ իւրմէ։ Եւ
ընկեսցէ զնա՝ եւ մի՛ խնայեսցէ. ի ձե-
23 ռանէ նորա փախստիւ փախիցէ։ Ծափ
զծափի [17]հարցէ ի վերայ նորա, եւ քար-
շեսցէ զնա՝՝ ի տեղւոջէ իւրմէ։

ԳԼ. ԻԸ

1 Զի է տեղի արծաթոյ՝ ուստի լինի, եւ
2 տեղի ոսկւոյ՝ ուստի կզկզի։ Երկաթ ի
հողոյ լինի, եւ [18]պղինձ հանդոյն քարի
3 տաշի։ Կարգ՝՝ եդ խաւարի, եւ զամե-

[1]Եբր. Ոգիք դողան ի խորոց, ջուրք եւ բնակիչք նոցա։ [2]Եբր. Սահման եդ. [3]Եբր. իւրով եհար զամբարտաւանութիւն։ (13) Հոգւով իւրով զարդարեաց զերկինս, եւ ձեռք նորա ստեղծին զվիշապն փախստեայ։ [4]Եբր. քանի՜ տակաւ են բանք զորս լուաք զնմանէ. իսկ [5]Եբր. Աստուած [6]Եբր. լեզու իմ նիւթեսցէ նենգութիւն [7]Եբր. Եղիցին թշնամիք իմ իբրեւ զամպարիշտս եւ յարուցեալքն ի վերայ իմ իբրեւ զանօրէնս։

[8]Եբր. յորժամ մեռանիցի (կամ, թէեւ կուտեալ իցէ մեծութիւն), յորժամ բարձցէ Աստուած զանձն նորա, [9]Եբր. Լիցի՞ ուրախ ի վերայ Ամենակալին. կարդասցէ՞ առ Աստուած յամենայն ժամ։ [10]Եբր. Աստուծոյ [11]Եբր. թագուցից [12]Եբր. յԱստուծոյ, եւ ժառանգութիւն բռնաւորաց զոր ընկալցին յԱմենակալէն։ [13]Եբր. զարմ նորա ոչ յագեսցի հացիւ։ [14]Եբր. այրիք նորա մի՛ լացցեն [15]Եբր. հանդերձ [16]Եբր. վհիւղ զոր շինէ պահապան [17]Եբր. հարցեն վասն նորա եւ շշեսցեն ի վերայ նորա [18]Եբր. քար հալեալ՝ պղինձ։ (3) Վախճան

նայն վախճան ինքն ճշմարտէ, [1]զքար
4 խաւար եւ զստուերս մահու, Զխրամ
հեղեղատի ի փոշւոյ. եւ որ մոռանան
զճանապարհս արդարութեան՝ տկարա-
5 ցին ի մարդկանէ՛՛ Երկիր՝ ի նմանէ ելցէ
հաց, եւ ի ներքոյ նորա իբրեւ զհուր
6 շրջեցաւ։ Տեղի շափիւղայի քարինք նորա՝
7 եւ հող նորա ոսկի։ Շաւիղ է զոր ոչ
ծանեաւ թռչուն, եւ ոչ զննեաց զնա
8 ակն անգեղ։ Եւ ոչ կոխեցին զնա որ-
դիք ամբարտաւանից, ոչ անց ի նա
9 առեւծ։ Յապառաժն ձգեաց զձեռն իւր,
10 տապալեաց զլերինս ի հիմանէ։ [2]Զգետս
զետոյ պատառեաց՛՛, զամենայն պատ-
11 ուականս ետես ակն նորա։ [3]Զխորս
գետոց յայտնեաց, եւ եցոյց զզօրու-
12 թիւն իւր ի լոյս՛՛ Իսկ իմաստութիւն
ուստի՞ գտաւ, կամ զի՞նչ տեղի իցէ
13 հանճարոյ։ Ոչ գիտէ մարդ [4]զճանապարհս
նորա, եւ ոչ գտաւ [5]ի մէջ մարդկան՛՛։
14 Անդունդք ասացին թէ Չէ առ իս, եւ
15 ծով ասաց թէ Չէ ընդ ինեւ։ Ոչ տացի
[6]զրաւական ընդ նորա, եւ ոչ կշռեսցի
16 արծաթ ընդ գնոց նորա։ Ոչ [7]բարձցի
ընդ ոսկւոյն Սոփիրայ՛՛, ընդ եղնգանն
17 պատուականի եւ ընդ շափիւղայ։ Ոչ
զուգեսցի ընդ նմա ոսկի եւ [8]ապակի,
եւ ի գինս նորա անօթք ոսկեղէնք։
18 [9]Բարձրութիւնք եւ խորութիւնք ոչ յի-
շեսցին. եւ ձգեաց զիմաստութիւն քան
19 զներքագոյնս՛՛։ Ոչ հաւասարեսցէ նմա
տպազիոնն Եթովպացւոց, ընդ ոսկւոյ
20 սրբոյ ոչ [10]բարձցի։ Իսկ իմաստութիւն
ուստի՞ գտաւ, եւ զի՞նչ իցէ տեղի
21 հանճարոյ։ Ղօղեալ է ի մարդկանէ, եւ
22 ի թռչնոց երկնից ծածկեցաւ։ Կորուստ
եւ մահ ասացին, Լուաք[11] զփառաւո-
23 րութենէ նորա։ Եւ [12]Տէր զիւրաւ ընծա-
յեցոյց՛՛ զճանապարհս նորա. եւ ինքն
24 գիտէ զտեղի նորա. [13]Եւ ինքն՛՛ տեսանէ
25 զամենայն առ ի ներքոյ երկնից։ [14]Քանզի
ինքն գիտէ զամենայն զոր արար յերկրի,
զկշիռ հողմոյ եւ զչափ ջրոյ զոր արար։
26 Ինքն ետես եւ համարեցաւ, եւ զճա-
նապարհ նորա արձակմամբ բարբառոյ՛՛
27 Յայնժամ ետես զնա՝ եւ պատմեաց
28 զնմանէ. պատրաստեալ քննեաց. Եւ
ասէ ցմարդ, Ահա [15]աստուածպաշտու-
թիւն է իմաստութիւն, եւ մեկնել ի
չարեաց է հանճար։

Գլ. ԻԹ

1 Դարձեալ յաւելեալ Յոբայ յառակն իւ-
2 րում ասէ, Ո՞ տայր զիս ըստ ամսոց
աւուրցն առաջնոց, յորս Աստուած պա-
3 հէր զիս. Յորժամ լուսաւոր էր ճրագ
նորա ի վերայ գլխոյ իմոյ, յորժամ լու-
4 սով նորա գնայի ի խաւարի. [16]Յորժամ
կայի զուարճացեալ ի ճանապարհի,
յորժամ Տէր՛՛ այցելութիւն առնէր տան
5 իմում. [17]Յորժամ զգածեալն էի մեծու-
6 թեամբ, եւ շուրջ զինեւ ծառայք՛՛ Յոր-
ժամ թանային ճանապարհք իմ կոգւով,
եւ ստոգանէին լերինք իմ [18]կաթամբ.
7 Յորժամ ելանէի ընդ [19]առաւօտս ի քա-
ղաքն, եւ արկանէր ի հրապարակս ա-
8 թոռ իմ, Տեսանէին զիս երիտասարդք՝
եւ թաքչէին, եւ ծերք՝ եւ յառն կային.
9 Ծոլք պազարէին ի խօսելոյ, եւ դնէին
մատունս ի վերայ բերանոյ իւրեանց։
10 [20]Ոյք լսէին զինէն՝ երանէին ինձ՛՛, եւ
լեզուք նոցա ի քիմս իւրեանց կցեցան։
11 Զի ունկն որ լսէր՝ երանի տայր ինձ,
եւ ակն որ տեսանէր՝ [21]խոնարհէր յինէն՛՛։
12 Զի փրկեցի զաղքատն [22]ի ձեռանէ հզօ-
րին, եւ՛՛ որբոյ որոյ ոչ էր օգնական՝
13 օգնեցի։ Օրհնութիւն կորուսելոյն ի վե-
րայ իմ [23]եկեսցէ, եւ բերան այրւոյն
14 զիս օրհնեաց՛՛։ Զարդարութիւն զգեց-
եալ էի, եւ արկեալ զիրաւունս համգոյն
15 կրկնոցի։ Աչք էի կուրաց եւ ոտք կաղաց.
16 Հայր էի ես տկարաց, զդատաստան զոր ոչ
17 գիտէի՝ քննէի։ Խորտակէի զկզակս անի-
րաւաց, եւ ի միջոյ ժանեաց նոցա կոր-

[1] Եբր. զքար խաւարի եւ ստուերի մահու։ (4) Հոսանք կրամ ի տեղւոջ ուր բնակէ նա. կախին ոտանց գնելոյ ուր. երերին հեռի ի մարդկանէ։ [2] Եբր. Ի վէմս պատառեաց ջրմուղս [3] Եբր. Կապեցոյց զգետս ի հոսելոյ. եւ զթագուցեալն եհան ի լոյս։ [4] Եբր. զգին [5] Եբր. յերկրին կենդանեաց [6] Եբր. ոսկի սուրբ [7] Եբր. կշռեսցի ընդ ոսկւոյ Ոփերայ [8] Եբր. ակնվանի [9] Եբր. Մարգարիտ եւ բիւրեղ ոչ յիշեսցին, եւ գին իմաստութեան առաւել քան զյակինթ։ [10] Եբր. կշռեսցի [11] Եբր. [illegible], ականջօք մերովք [12] Եբր. Աստուած իմանայ [13] Եբր. Քանզի ինքն հայի մինչեւ ի ծագս երկրի,

[14] Եբր. Յորժամ արար կշիռ հողմոց, եւ կշռեաց զջուրս չափով. (26) Ի դնել նորա օրէնս անձրեւի, և ճանապարհ փայլատականց որոտմանց։ [15] Եբր. երկիւղ Տեառն [16] Եբր. Որպէս էի ի լիութեան աւուրց իմոց, յորժամ Աստուած [17] Եբր. Յորժամ Ամենակալն էր ընդ իս, շուրջ զինեւ մանկունք իմ. [18] Եբր. ձիթով [19] Եբր. դուռն [20] Եբր. Ձայնք իշխանաց լռէին [21] Եբր. վկայէր զինէն [22] Եբր. որ աղաղակէր, [23] Եբր. գայր, եւ զսիրտ այրւոյն ուրախ առնէր

18 զէր զյափշտակութիւն․ Ասէի, ¹Թերեւս հասակ իմ ծերասցի, եւ իբրեւ
զծառ արմաւոյ բազում ժամանակս կե-
19 ցից՝՝ Արմատ իմ ընդարձակեալ է ի վե-
րայ ջրոյ, եւ ցօղ հանգիցէ ի վերայ
20 հնձոց իմոց։ ²Կարծիքն իմ ընդունայն
եղեն ինձ, գործիք իմ եւ աղեղն իմ ի
21 ձեռին նորա գնաց՝՝ Յինէն լուեալ անսային, եւ կարկէին ի խորհրդեան իմում
22 ի բանս իմ ոչ յաւելուին, խնդային
23 լինէին յորժամ խօսէի ընդ նոսա։ ³Իբրեւ զերկիր ծարաւի որ սպասիցէ անձ-
24 րեւի, եւ նոքա իմոց խօսից՝՝ Եթէ ծիծաղէի ընդ նոսա, ոչ հաւատային, եւ
25 լոյս երեսաց իմոց ոչ նուաղէր։ Ընտրէի
զճանապարհս նոցա, եւ նստէի իշխան, եւ բնակէի իբրեւ զթագաւոր ի մէջ զօրականաց․ ⁴զոր օրինակ զգամոքն մխիթարէի՝՝։

## ԳԼ. Լ

1 Արդ ծիծաղին զինեւ ⁵յետինք․ արդ
խրատեն զիս ի միասին, զորոց պախարակէի զհարս նոցա․ զորս՝՝ ոչ համարէի լինել հաւասար շանց արօտա-
2 կանաց իմոց։ Նա եւ զօրութիւն ձե-
ռաց նոցա ընդէ՞ր էր ինձ․ ⁶ի վերայ
3 նոցա կորեաւ վախճան՝՝։ Ի կարօտու-
թեան եւ ի սովի ⁷անծնունդ․ որ փախչէին երէկ յանջրդւոյ՝՝, յանձկութենէ եւ
4 ի թշուառութենէ։ Որք ⁸պատէին խար-
շափուն բանջարով՝՝ որոց բանջարն խակ
5 էր կերակուր։ ⁹Անարգք եւ արհամարհեալք եւ կարօտեալք յամենայն բարութենէ, որք եւ զարմատս փայտից
6 ծամէին ի սաստիկ սովոյ։ Յարեան ի
վերայ իմ գողք․ որոց տունք իւրեանց
7 էին ծակք վիմաց․ ի մէջ արձագանգաց
գոչեսցեն․ որք ընդ խաւովք վայրենա-
8 եօք բնակեալ էին՝՝ Որդիք անզգամաց
եւ անուանարկաց, եւ չիջեալ փառք
9 յերկրէ։ Արդ քնար եմ ես նոցա, եւ
10 զիս ունին բամբասանս։ Գարշեցան յի-
նէն մեկնեալք ի հեռաստանէ, եւ յե-
11 րեսաց իմոց թուք ոչ խնայէին։ ¹⁰Զի
բացեալ զկապարճս իւր խոցոտեաց
զիս․ եւ սանձս երեսաց իմոց առաքեաց։
12 Յարեան ի վերայ աջոյ չարաւեզի․ զոտս
իւր ձգեաց՝ եւ ճանապարհ արար ի վե-
13 րայ իմ։ Ընդ շաւիղս կորստեան նոցա
չփեցան շաւիղք իմ․ մերկացոյց զպատ-
14 մուճան իմ․ Նետիւք իւրովք խոցոտեաց
զիս, մատուցեալ որպէս եւ կամի։
15 Ցաւօք վարակեալ եմ, դարձեալ են յիս
ցաւք․ գնաց յինէն յոյս իբրեւ զհողմ,
16 եւ իբրեւ զմէգ փրկութիւն իմ՝՝ Եւ
արդ զինեւ զեղցի անձն իմ․ ունին զիս
17 աւուրք ցաւոց։ Գիշերի ոսկերք իմ
խարշեցան, եւ ջիղք իմ լուծեալ են։
18 Բազում զօրութեամբ ձեռն արկ զպատ-
մուճանաւ իմով, եւ իբրեւ զմապաւէն
պատմուճանի իմոյ շուրջ կալաւ զիս։
19 Համարի զիս հանգոյն կաւոյ, ի հող եւ
20 ի մոխիր է բաժին իմ։ Աղաղակեցի առ
քեզ՝ եւ ոչ ¹¹լուիցես ինձ, կացին եւ
21 հայեցան՝՝ յիս։ Պատահեցար ինձ անո-
22 ղորմ, հզօր ձեռամբ հարեր զիս։ ¹²Կար-
գեցեր զիս ի ցաւս, եւ ընկեցեր զիս
23 ի փրկութենէ՝՝ Գիտեմ զի մահ սատա-
կեսցէ զիս, զի բնակութիւն ամենայն
24 մահկանացուի երկիր է։ ¹³Երանի թէ
կարէի զանձն իմ վարմել, կամ աղա-
25 չել զայլ՝ եւ առնէր ինձ զայն՝՝ Եւ ես
ի վերայ ամենայն տկարի լայի, եւ հե-
ծեծէի յորժամ տեսանէի զայր ի վիշտս։
26 ¹⁴Եւ ունէի ի բարութեան, եւ ահաւասիկ

---

¹Եբր. Ի բունի իմում մեռայց, եւ իբրեւ զաւազ բազմացուցից զաւուրս։ ²Եբր. Փառքն իմ նոր եղեն ինձ, եւ աղեղն իմ ի ձեռին իմում նորոգեսցի։ ³Եբր. Եւ սպասէին ինձ որպէս անձրեւի, եւ բանային զբերանս իւրեանց իբր յանձրեւ անագան։ ⁴Եբր. իբրեւ մխիթարիչ սգաւորաց ⁵Եբր. մանկագոյնք քան զիս տիօք, զորոց զհարս նոցա ⁶Եբր. առոյգութիւն նոցա կորեաւ ⁷Եբր. Հիւծեալք, որ փախչէին յանջրդւոյ, ի մթութենէ ⁸Եբր. քաղէին խարշափուն բանջար, եւ ⁹Եբր. Վանէին ի միջոյ, գոչէին զկնի նոցա իբրեւ զգողոյ։ (6) Ի Ձորս ահաւորս բնակին, ի ծակս երկրի և վիմաց։ (7) Ի մէջ մացառաց գռային, ընդ եղնջօք ժողովէին։

¹⁰Եբր. Զի թուլացոյց զերասանակ իմ եւ նեղեաց զիս, եւ զսանձ առաջի իմ արձակեցին։ (12) Ընդ աջմէ յառնեն կորիւնք, մղեն զոտս իմ, եւ տարածեն հակառակ ինձ զճանապարհս կորստեան իւրեանց։ (13) Եղծանեն զշաւիղ իմ, յաւելուն զվիշտս իմ, չիք ինձ օգնութիւն ընդդէմ նոցա։ (14) Իբրեւ ի լայն խրամատէ գան․ ի մէջ աւերակաց թաւալին։ (15) Արհաւիրք դարձան ի վերայ իմ, հալածեն իբրեւ զհողմ զփառս իմ․ և իբրեւ զմէգ անց յաջողութիւն իմ։ ¹¹Եբր. տաս պատասխանի․ կացի․ և ոչ հայիս ¹²Եբր. Բառնաս զիս ի վերայ հողմոյ եւ հեծուցանես, եւ մաշես զիս ի սպառ։ ¹³Եբր. Սակայն ոչ արկցէ ձեռն յաւեր․ եթէ ի կործանման աղաղակեսցեն։ ¹⁴Եբր. Յորժամ ակն ունէի բարութեան՝ եկին չարիք․ մինչդեռ սպասէի լուսոյ՝ եկն խաւար։

պատահեցին ինձ աւուրք չար-
27 եաց ։՝՝ Որովայն իմ եռայ, եւ ոչ դա-
դարեսցէ. ժամանեցին ինձ աւուրք աղ-
28 քատութեան ։ [1]Նեղեալ շրջեցայ առանց
բերանակապի՝՝. կացի ի մէջ եկեղեցւոյ
29 աղաղակ բարձեալ ։ Եղբայր եղէ համ-
30 բարուաց, եւ ընկեր ջայլեմանց։ Մորթ
իմ սեւացաւ սաստկագոյն, եւ ոսկերք
31 իմ ի տօթոյ ։ Դարձաւ ի սուգ քնար
իմ, [2]եւ սիրտ իմ՝՝ եւ երգ իմ ի լալիւն ։

Գլ. ԼԱ

1 Ուխտ եդի ընդ աչս իմ եւ [3]ոչ հայե-
2 ցայ ի կոյս ։ Եւ բաժանեաց Աս-
տուած ի վերուստ, եւ ժառանգութիւն
3 Բաւականին՝՝ ի բարձանց ։ Ո՞չ ապաքէն
կորուստ անիրաւին, եւ տարագրութիւն
այնոցիկ ոյք գործեն զանօրէնութիւն ։
4 Ո՞չ ապաքէն Ինքն տեսցէ զճանապարհս
իմ, եւ ամենայն գնացս իմ թուեսցին ։
5 Եթէ գնացեալ իցեմ ընդ այպանօղս,
եթէ փափաղեաց ոտն իմ ի նենգութիւն,
6 Զի կշռեալ եմ ի կշիռս արդարութեան,
7 եւ գիտէ Տէր զանմեղութիւն իմ ։ Եթէ
թիւրեցաւ ոտն իմ ի ճանապարհէ, եթէ
չոգաւ սիրտ իմ զկնի ական իմոյ, եթէ
8 հպեցայ ձեռօք իմովք ի կաշառս, Ապա
ես սերմանեցից՝ եւ այլք կերիցեն, եւ
9 անարմատ եղէց յերկրի ։ Եթէ գնաց սիրտ
իմ զհետ կնոջ առն այլոյ, եթէ դարա-
10 նակալ եղէ առ դրունս [4]առն նորա, Ա-
պա լիցի հաճոյ եւ իմ կնոջ այլում, եւ
11 մանկունք իմ տառապեսցին ։ Զի սրտմը-
տութիւն անժոյժ բարկութեան է պղծել
12 զկին առն. Հուր վառեալ է յամենայն
անդամս նորա. զի յոր կոյս հասցէ յար-
13 մատոց խլեսցէ ։՝՝ Եթէ խոտեցի երբեք
զիրաւունս ծառայի կամ աղախնոյ մա-
14 տուցելոյ առ իս յատեան. Եւ զի՞նչ գոր-
ծեցից եթէ հարցափորձ արասցէ ինձ
[5]Տէր, եւ եթէ այցելութիւն՝ զի՞նչ պա-
15 տասխանի արարից ։ [6]Ո՞չ ապաքէն որ-
պէս եղէ յորովայնի՝ եւ նոքա եղեն, ի
16 նմին որովայնի եղաք՝՝ Իսկ տկարաց ո-
րոց պէտք ինչ էին, ո՞չ արգելուք երբեք
վճարեցի. զակն այրւոյ ոչ կողկողեցու-
17 ցի ։ Եթէ կերայ արգելուք զպատառ իմ
18 միայն, եւ որբոյն ոչ կարկառեցի ։ Զի
ի մանկութենէ իմմէ սնուցի իբրեւ
զհայր, եւ յարգանդէ մօր իմոյ առաջ-
19 նորդեցի ։ Եթէ արարի՞ անտես զմերկն
20 կորուսեալ, եւ ոչ զգեցուցի ։ Եթէ ոչ
օրհնեցին զիս [7]տկարք, եւ ի կորոց խա-
21 շանց իմոց ջեռան թիկունք նոցա ։ Եթէ
վերացուցի ձեռն ի վերայ որբոյն՝ յու-
սացեալ թէ բազում է իմ օգնականու-
22 թիւն, Ապա թափեսցի յանրակէ ուս
իմ, եւ բազուկ իմ յարմկանէ իմմէ խորտա-
23 կեսցի ։ Զի ահ [8]Տեառն կալաւ զիս, եւ
24 [9]առաջի նորա ոչ հանդարտեցից ։ [10]Եթէ
կարգեցի զոսկի ի հող իմ, եթէ յականս
25 պատուականս յուսացայ, Եթէ ուրախ
եղէ ի բազում մեծութեան եկելոց ինձ,
եթէ ի վերայ անթուոյ եգի զձեռն իմ.
26 Կամ թէ ո՞չ տեսանիցեմք զարեգակն լու-
սաւորիչ նուաղեալ, եւ զլուսին մա-
27 շեալ. եւ ոչ ի նոցանէ՝՝ Եթէ խաբեցաւ
գաղտ սիրտ իմ. եթէ ձեռն եդեալ ի վե-
28 րայ բերանոյ իմոյ համբուրեցի, Ապա
այն ի մեծ անօրէնութիւն համարեսցի
ինձ, զի ստեցի առաջի [11]Տեառն բարձ-
րելոյ. ի նմանէ է զօրութիւն եւ կար,
29 իմաստութիւն եւ հանճար՝՝. Եթէ ոտն-
հար եղէ ի վերայ գլորման թշնամեաց ի-
մոց, եւ ասացի ի սրտի իմում թէ վա՜շ.
30 [12]Ապա լուիցէ ունկն իմ զանէծս իմ,
զլուեցայց ապա եւ ես ի ժողովրդենէ
31 իմմէ զրուցեալ. Եթէ ասացին զինէն
բազում անգամ աղախնայք իմ, Ո՛ տայր
մեզ յագել ի մարմնոյ նորա. զի յոյժ
32 քաղցր էր նոցա՝՝ Արտաքոյ ոչ ագանէր
օտար, զի դուռն իմ բաց էր ամենայն
33 եկելոց. [13]Եթէ թաքուցի զմեղս իմ ա-
34 կամայ մեղուցեալ. Զի ոչ ամաչէի ի

[1]Եբր. Թխացեալ շրջեցայ, ոչ յարեգակնէ
[2]Յեբր. տուտուկ [3]Եբր. զիա՞րդ հայեցայց ի կոյս ։ (2) Եւ զի՞նչ է բաժին Աստուծոյ ինձ ի վերուստ, եւ ժառանգութիւն Ամենակալին
[4]Եբր. ընկերի իմոյ, (10) Ապա աղասցէ այլում կին իմ. եւ տառապեսցեն զնա այլք ։ (11) Քանզի ոճիր է այս, եւ անօրէնութիւն դատապարտութեան ։ (12) Զի հուր է նա որ ուտէ մինչեւ ի կորուստ. եւ զամենայն արդիւնս իմ խլեսցէ ։ [5]Եբր. Աստուած [6]Եբր. Ո՞չ ապաքէն որ արարն զիս յարգանդի՝ արար զնա, եւ որ եղն զմեզ յորովայնի՝ նոյն է ։

[7]Եբր. երիկամունք նորա [8]Եբր. Աստուծոյ
[9]Եբր. ի բարձրութենէ [10]Եբր. Եթէ եդի յոսկի զյոյս իմ, եւ ցոսկի սուրբ ասացի, Վստահութիւն իմ, (25) Եթէ ուրախ եղէ զի բազում էին ստացուածք իմ, եւ զի բազում ինչ եգիտ ձեռն իմ, (26) Եթէ տեսանէի զլոյս յորժամ ծագէր, եւ զլուսին որ պայծառութեամբ գնայր. [11]Եբր. Աստուծոյ բարձրելոյ [12]Եբր. Եւ ոչ ետու մեղանչել քմաց իմոց, խնդրել անէծիւք զանձն նորա. (31) Եթէ չասացին արք վրանի իմոյ, Ո՞ր ի մսոյ նորա ոչ յագեցաք.
[13]Եբր. Եթէ թաքուցի իբրեւ զԱդամ (կամ, զմարդ) զյանցուածս իմ՝ ծածկել ի ծոցի

բազմամբոխ ամբոխէ՝ առ ի չխոստովանելոյ
առաջի նոցա. եթէ արձակեցի զերբեք
զտկարն՝ ունայն զոգով ելանել ի դրաց
35 իմոց։ Ո՛ տայր ինձ լսել եթէ ձեռն
Տեառն չէր զարհուրեցուցեալ. կամ թէ
36 մուրհակ՝ զոր ունէի զումեքէ, իբրեւ
զպսակ ի վերայ ուսոց եդեալ ընթեռ-
37 նուի. Եւ ո՞չ պատառէի զայն եւ անդրէն
դարձուցանէի, ոչ ինչ առեալ ի պարտա-
38 կանէն։ Եթէ հեծեաց երբեք երկիր վասն
իմ", եւ եթէ ակօսք նորա լացին առ
39 հասարակ, Եւ եթէ զզօրութիւն նորա
կերայ միայն առանց գնոց, եթէ զանձն
անտեառն երկրին զայրացուցեալ տրտմե-
40 ցուցի, Ապա փոխանակ ցորենոյ բուսցի
եղինճ, եւ փոխանակ գարւոյ՝ [1]մորենի։
Եւ դադարեաց Յոբ ի խօսից։

## ԳԼ. ԼԲ

1 Լռեցին եւ երեքին բարեկամք նորա
այնուհետեւ ի խօսելոյ ընդդէմ Յոբայ.
քանզի էր Յոբ արդար [2]առաջի նոցա"։
2 Եւ բարկացաւ Եղիուս Բարաքիելի Բու-
զացի, յազգականութենէ [3]Արամայ՝ աշ-
խարհին Աւսիտացւոյ". բարկացաւ Յոբայ
յոյժ, զի երեւեցոյց զանձն արդար [4]ա-
3 ռաջի Տեառն"։ Եւ ի վերայ երեցուն բա-
րեկամացն բարկացաւ յոյժ, զի ոչ կարա-
ցին տալ պատասխանի ընդդէմ Յոբայ. եւ
4 եդեալ զնա լինել ամպարիշտ։ Եւ Եղիուս
համբերեաց տալոյ պատասխանի Յոբայ,
զի ծերագոյն քան զնա էին աւուրբք։
5 Եւ ետես Եղիուս եթէ ոչ գոյ պատասխա-
նի ի բերան երեցունց արանցն, եւ
6 սրտմտեցաւ բարկութիւն նորա։ Կրկնեալ
անդրէն Եղիուսայ Բարաքիելի Բուզաց-
ւոյ, ասէ, Մանուկ եմ ես ժամանակաւ,
եւ դուք էք ծերագոյնք. վասն որոյ լուռ
եղէ, երկուցեալ պատմել զանձին իմոյ
7 զիմաստութիւն։ Ասացի թէ՝ Բազմաժա-
մանակեայք իցեն որ խօսիցին, եւ բա-
զում ամօք գիտիցեն զիմաստութիւն։
8 [5]Եւ ոչ այնպէս. այլ ոգի է մարդկան",
եւ շունչ Ամենակալի է որ ուսուցանէ։
9 Ոչ բազմաժամանակեայք են իմաստունք,
10 եւ ոչ ծերք գիտեն զիրաւունս։ Վասն
որոյ ասացի, Լուարուք ինձ եւ պատմե-
11 ցից ձեզ զոր գիտեմ. [6]Ունկն դիք բա-
նից իմոց. ասացից ձեզ լու ի լու", մին-
12 չեւ քննիցէք զբանս. [7]Թէ ձեւք չափ
իմանայցեմ." եւ ահա չէր որ յանդի-
մանէր զՅոբ, եւ տայր պատասխանի
13 բանից նորա ի ձէնջ։ Զի մի ասիցէք,
Գտաք [8]զիմաստութիւն ի Տէր յաւե-
14 լեալք. Եւ առն միում համարձակեցէք
խօսել բանս այսպիսիս"
15 Զարհուրեցան՝ եւ ոչ եւս ետուն պա-
տասխանի. [9]հնացուցին յինքեանց զբանս.
16 Համբերեցին եւ" ոչ խօսեցան, զի կա-
17 ցին եւ ոչ ետուն պատասխանի։ [10]Կրկնեալ
անդրէն Եղիուսայ ասէ, Դարձեալ խօ-
18 սեցայց". Զի լի եմ բանիւք, քանզի
19 [11]սատակէ զիս ոգի որովայնի։ Եւ որո-
վայն իմ իբրեւ զտիկ քաղցուի կապեալ
եռայ, կամ իբրեւ [12]զփուքս դարբնոյ
20 ուռուցեալ"։ Խօսեցայց զի հանգեայց,
21 բացեալ զշրթունս [13]իմ։ Եւ ի մարդոյ ոչ
ամաչեցից, եւ ի մարդկանէ ոչ պատկա-
22 ռեցից։ Քանզի ոչ գիտեմ աչառել երե-
սաց, ապա թէ ոչ՝ [14]եւ զիս ցեց կերիցէ"։

## ԳԼ. ԼԳ

1 Բայց արդ դու, Յոբ, լուր զբանս իմ,
2 եւ ունկն դիր խօսից իմոց։ Ահաւասիկ
բացի զբերան իմ, եւ խօսեցաւ լեզու
3 [15]իմ։ Սուրբ է սիրտ իմ բանիւք, իմաս-
տութիւն շրթանց իմոց յստակս իմաս-
4 ցի"։ Հոգի աստուածեղէն է որ արար
զիս, եւ շունչ Ամենակալի է որ [16]ու-
5 սուցանէ զիս։ Եթէ կարող ես՝ տուր
ինձ առ այս պատասխանի, ապա թէ

իմում զանօրէնութիւն իմ. (34) Վասն զի երկնչէի ի բազմակոյտ ամբոխէ, և արհամարհանք ընտանեաց սաստկացոյց զիս, եւ լռեցի. ոչ ելի ընդ դուռն։ (35) Ո՛ տայր եթէ լսէր ոք ինձ. (ահա նշան իմ, փափագ իմ. Ամենակալն տացէ ինձ պատասխանի,) և գիրս գրեսցէ դատախազն իմ։ (36) Ապա թէ ո՞չ բառնայի զայն ի վերայ ուսոց իմոց, կապէի զնա ինձ պսակ։ (37) Զթիւ գնացից իմոց պատմէի նմա, իբրեւ զիշխան մատչէի առ նա։ (38) Եթէ հեծեաց երբեք երկիր իմ հակառակ ինձ [1]Եբր. որոմն
[2]Եբր. յաչս իւր [3]Եբր. Ռամայ [4]Եբր. քան զԱստուած

[5]Եբր. Այլ դոյ ոգի ի մարդն [6]Եբր. Ահաւասիկ սպասեցի բանից ձերոց. ունկնդիր եղէ հանճարութեանց ձերոց
[7]Եբր. Եւ միտ դնէի ձեզ. [8]Եբր. զիմաստութիւն. Աստուած յաղթեսցէ նմա, ոչ մարդ։ (14) Եւ նա ոչ ուղղեաց հակառակ ինձ զբանս իւր, եւ բանիւք ձերովք ոչ տաց նմա պատասխանի։
[9]Եբր. մինչեւ հատանել բանից նոցա. (16) Համբերեցի՞ց. զի [10]Եբր. Պատասխանի տաց և ես ի բաժնի իմում. յայտ արարից և ես զոր գիտեմն։
[11]Եբր. ստիպէ [12]Եբր. տիկս նորս պատառեսցի
[13]Եբր. իմ տաց պատասխանի [14]Եբր. բարձցէ զիս Արարիչն իմ [15]Եբր. իմ ի քիմս իմ. (3) Յուղղութենէ սրտի իմոյ բանք իմ, և զգիտութիւն ուրբ խօսեսցին շրթունք իմ [16]Եբր. կենդանի արար

6 ոչ՝ ¹հանդարտ լեր։ Կաց ըստ իս՝ եւ ես
ըստ քեզ. ի կաւոյ կազմեալ ես եւ դու
իբրեւ զիս, անդստին կազմեալ եմք՝՝
7 Արդ մի՛ ահ իմ զարհուրեցուսցէ զքեզ,
եւ մի՛ ձեռն իմ ծանրասցի ի վերայ քո։
8 Սակայն խօսեցար յականջս իմ, եւ
9 զբարբառ բանից քոց լուայ, Զի ասացեր
թէ Սուրբ եմ՝ եւ ոչ մեղայ, անարատ եմ՝
10 զի ոչ անօրինեցի։ Մեղադրութիւն եգիտ
զինէն, համարեցաւ զիս իբրեւ զհակա-
11 ռակորդ. Եդ ի կոճեղ զոտն իմ, սպասեաց
12 զամենայն ճանապարհս իմ։ ²Զիա՞րդ ա-
սես թէ Արդար եմ, եւ ոչ լուաւ ինձ.
զի յաւիտենական է՝ որ ի վերայ մարդ-
13 կան է։ Եւ ասես, թէ Ընդէ՞ր տակաւ ին
դատաստանի իմում ոչ լուաւ ամենայն
14 բանի։ Ի միում նուագի խօսեսցի Տէր,
15 եւ յերկրորդումն՝՝ Երազով կամ զբաղ-
մամբ գիշերականաւ, յորժամ անկանի-
ցին արհաւիրք ահեղք ի վերայ մարդ-
16 կան՝ նիրհմամբ յանկողնի, ³Յայնժամ
յայտնի միտք մարդկան. այնպիսի տես-
17 լեամբ ահի զարհուրեցոյց զնոսա, Դար-
ձուցանել զմարդ յանիրաւութենէ, եւ
զմարմին նորա փրկեաց ի կործանմա-
18 նէ՝՝ Խնայեաց զանձն նորա ի մահուա-
19 նէ, չանկանել նմա ի պատերազմի։ Դար-
ձեալ կշտամբեաց զնա հիւանդութեամբ
անկողնի, եւ զբազմակոյտ ոսկերաց նո-
20 րա ընդարմացոյց։ Ամենայն ուտելի կե-
րակրոյ ոչ կարասցէ ակն ունել. եւ անձն
21 նորա յանկասցի կերակրոց։ Մինչեւ նե-
խեսցին մարմինք նորա, եւ ցուցցէ զոս-
22 կերս նորա ունայն։ Մերձեցաւ ի մահ անձն
23 նորա, եւ կեանք նորա ի դժոխս։ ⁴Ե-
թէ իցեն հազար հրեշտակք մահաբերք,
մի ի նոցանէ զնա մի՛ խոցեսցէ, եթէ
խմասցի սրտիւ իւրով դառնալ առ Տէր։
24 Պատմեսցէ մարդոյ զմեղս իւր, եւ ցուցցէ
զանմտութիւն իւր. պաշտպանեսցէ առ
25 ի չանկանելոյ նմա ի մահ։ Նորոգեսցէ
զմարմին նորա իբրեւ զծեփ որմոյ, եւ
ոսկերք նորա լցցին ուղղով. փափկա-
ցուսցէ զմարմին նորա իբրեւ զտղայոյ,
հաստատեսցէ զնա երիտասարդացեալ ի
26 մէջ մարդկան։ Յաղաչել իւրում առ
Տէր՝ ընդունելի եղիցի նմա. մտցէ լուրջ
երեսօք զուարճութեամբ, հատուսցէ մարդ-
27 կան զարդարութիւն։ Ապա մեղադիր
լիցի մարդ, ինքն ցինքն ասիցէ, թէ
Զորպիսի՛ս վճարէի, եւ ոչ արժանի ըստ
28 որոց մեղայն պատժեաց զիս։ Փրկեաց
զանձն իմ զի մի՛ մտցէ յապականու-
թիւն. եւ կեանք իմ տեսցեն զլոյս։
29 Ահա զայս ամենայն գործէ Հզօրն, ե-
30 րիս ճանապարհս ընդ առն։ Այլ փրկեաց
զանձն իմ ի մահուանէ, զի կեանք իմ
31 ի լոյս օրհնեսցեն զնա՝՝ Ունկն դիր, Յոբ,
եւ լուր ինձ, կարկեաց եւ ես խօսե-
32 ցայց։ Եթէ գուցէ բան, տուր ինձ պա-
տասխանի. քանզի կամիմ թէ արդա-
33 րասցիս։ Ապա թէ ոչ, լուր ինձ դու,
կարկեաց եւ ուսուցից քեզ զիմաստու-
թիւն։

## Գլ. ԼԴ

1 Կրկնեալ անդրէն Եղիուս ասէ,
2 Լուարուք ինձ, իմաստունք, ունկնդիր
3 լերուք, հանճարեղք։ Զի ունկն զբանս
քննէ, եւ ⁵կոկորդ զկերակուրս ճաշակէ՝՝։
4 Ընտրեսցուք մեզ զդատաստան, եւ գի-
տասցուք ի միջի մերում թէ ⁶բարի է՝՝։
5 Զի ասաց Յոբ թէ՝ Արդար եմ ես, եւ
6 ⁷Տէր զընկէց զիրաւունս իմ, ⁸Եւ ստեաց
դատաստանի իմում. բռնութեամբ՝՝ է
7 նետս իմ առանց անիրաւութեան։ Ո՞վ
է իբրեւ զՅոբ՝ որ ըմպէ զարհամարհանս

---

[1] Եբր. պատրաստ լեր, կաց առաջի իմ։ (6) Ահա ես ըստ բանի քում վասն Աստուծոյ. ի կաւոյ կազմեալ եմ և ես։ [2] Եբր. Ահա սամ քեզ պատասխանի. եթէ չեղեր յայսմ արդար, զի մեծ է Աստուած քան զմարդ։ (13) Ընդէ՞ր հակառակ կաս նմա, զի ոչ միում ի բանից իւրոց տայ նա պատասխանի։ (14) Ի միում նուագի խօսեցի Աստուած, և երկիցս, թէպէտ ոչ ոք առնու ի միտ,

[3] Եբր. Յայնժամ բանայ զունկն մարդկան, եւ զխրատն ատնոսա կնքէ։ (17) Դարձուցանել զմարդ յանիրաւութենէ, եւ զհպարտութիւն յառնէ կարճել։ [4] Եբր. Եթէ իցէ առ նմա պատգամաւոր խօսնակ մի ի հազարաց, ցուցանել առն զուղղութիւն նորա, (24) Յայնժամ ողորմեսցի եւ ասասցէ, Փրկեա զնա յիջանելոյ ի գուբ, գտի ես քաւութիւն։ (25) Փափկասցի մարմին նորա քան զտղայոյ, դարձցի յաւուրս մանկութեան իւրոյ։ (26) Յաղաչել իւրում առ Աստուած՝ ընդունելի եղիցի նմա, եւ տեսցէ զերեսս նորա ուրախութեամբ, եւ հատուսցէ նա մարդոյ զարդարութիւն նորա։ (27) Հայեսցի ի վերայ մարդկան, եւ եթէ ոք ասիցէ, Մեղայ եւ թիւրեցի զուղիղն եւ չեղեւ ինձ յօգուտ, (28) Յայնժամ փրկէ զանձն նորա յիջանելոյ ի գուբ, եւ կեանք նորա տեսցէ լոյս։

(29) Ահա զայս ամենայն գործեսցէ Աստուած երկիցս, երիցս ընդ առն. (30) Դարձուցանել զանձն նորա ի գբոյ, լուսաւորել ի լոյս կենդանեաց։

[5] Եբր. քիմք զկերակուրս ճաշակեն [6] Եբր. զինչ բարի իցէ [7] Եբր. Աստուած [8] Եբր. Յիրաւունս իմ ստե՞մ, մահացու

8 իբրեւ զջուր ։ [1]Ոչ մեղուցեալ եւ ոչ ամ-
պարշտեալ , կամ հաղորդեալ ճանապար-
հի որոց գործեն զանօրէնութիւն , գնալ
9 ընդ ամպարշտաց ։ Մի՛ ասիցես՝ չիք այ-
ցելութիւն ի վերայ առն , եւ այցելու-
10 թիւն նմա ի Տեառնէ ։" Վասն որոյ ,
հանճարեղք սրտիւք , լուարուք ինձ .
[2]մի՛ լիցի ինձ ամպարշտել առաջի Տեառն,
եւ առաջի Ամենակալին աղմկել զիրա-
11 ւունս ։ Այլ հատուցէ մարդոյ ըստ իւ-
րաքանչիւր գործոց նոցա , եւ ի ճանա-
12 պարհի առն գտցէ զնա ։ Համարիցի՞ս
զՏեառնէ" անկարգս ինչ առնել, կամ թէ
13 Ամենակալն աղտորիցէ՞ զիրաւունս ։ [3]Ո՞
արար զերկիր. ո՞ է որ արար զաս ի ներ-
քոյս երկնից , եւ զամենայն որ ի մի-
14 ջոցի՞" Եթէ կամեսցի արգելուլ եւ զշունչ
15 առ ինքեան արգելուլ , Վախճանեսցի ա-
մենայն մարմին առ հասարակ , [4]եւ ա-
մենայն մարմին ի հող դարձցի ուստի եւ
16 ստեղծաւ։ Արդ թէ ոչ" խրատեսցիս՝ լուր
զայս , ունկն դիր բարբառոյ բանից ի-
17 մոց ։ [5]Եթէ դու ոչ համարիցիս զայն որ
ատեայ զանիրաւութիւն , եւ կորուսա-
նէ զչարիս . արդարք յաւիտեան կեան ։
18 Ամպարիշտ է որ ասէ ցԹագաւոր թէ
Անիրաւ ես . ամպարշտագոյն քան զիշ-
19 խանս , Որ ոչ պատկառեաց ի պատուա-
կան երեսաց , եւ ոչ գիտաց պատիւ գնել
20 տկարաց եւ մեծարել զերեսս նոցա։ Ընդ-
ունայն լիցի նոցա աղաղակելն եւ ա-
ղաչել զայլս . զի վարեցան անօրէնու-
21 թեամբ խոնարհեցուցանել զտկարս ։ Զի
ինքն է տեսող գործոց մարդկան , եւ
զօղեաց ինչ ոչ ի նմանէ՝ զոր գործե-
22 ցին ։ Եւ չիք տեղի թաքչելոյ այնոցիկ՝
23 որ գործեն զանօրէնութիւն . Զի ոչ եւս
դիցէ ի վերայ առն . քանզի Տէր զամե-
24 նեսեան տեսանէ ։ Որ հասանէ անքննա-
կանաց , փառաւորաց եւ հրաշակերտաց՝
25 որոց ոչ գոյ թիւ ։ Որ" ճանաչէ զգործս
նոցա , եւ դարձուցանէ ի գիշերի , եւ
26 խոնարհեսցին ։ [6]Շիջոյց զամպարիշտս ,
մանիցոյցք եղեն առաջի թշնամեաց իւ-
27 րեանց ։ Զի խոտորեցան յօրինաց Աս-
տուծոյ , եւ զիրաւունս նորա ոչ ծա-
28 նեան ։" Ածել զնուաղ զաղաղակ տնան-
29 կի , եւ զբողոք աղքատաց լուիցէ ։ [7]Եւ
ինքն տացէ լռութիւն, ո՞ պատժես-
ցէ զնա . եւ" ծածկեսցէ զերեսս , ո՞
30 տեսանիցէ զնա Ե՛ւ ազգաց Ե՛ւ մարդկան
միանգամայն թագաւորեցուցանէ զայր
կեղծաւոր՝ վասն խստութեան ժողովրդ-
31 եան ։ [8]Զի որ ասէ ընդդէմ Հզօրին՝ թէ
32 Առի եւ զրուեցի առանց քո . Եթէ տե-
սեր՝ ցոյց ինձ , եւ" եթէ անիրաւու-
33 թիւն արարի , այլ ոչ յաւելից ։ Մի թէ
ի քէ՞ն ոք պահանջիցէ զայն , զի մեր-
ժեաց . դու ընտրեցեր՝ եւ ոչ ես . եւ ե-
34 թէ գիտիցես ինչ՝ խօսեաց ։ Վասն որոյ
հանճարեղք սրտիւք խօսեսցին [9]զայս ,
35 եւ այր իմաստուն [10]լուաւ զայս" ։ Բայց
Յոբ ոչ իմաստութեամբ խօսեցաւ , եւ
36 բանք նորա ոչ են հանճարով ։ [11]Բայց
սակայն ուսիր , Յոբ , եւ մի՛ տայցես տա-
կաւին պատասխանի իբրեւ զանզգամ ։
37 Զի մի՛ յաւելուցուք ի մեղս ձեր , եւ ա-
նօրէնութիւն համարեալ լիցի ձեզ ի բա-
զում բանս խօսելոյ առաջի Տեառն ։"

---

[1]Եբր. Եւ գնայ ընդ որս գործեն զանօրէնութիւն, և շրջի ընդ ամպարիշտս.(9)Զի ասաց. Ոչինչ օգտի այր՝ ի յինելոյ հաճոյ Աստուծոյ։ [2]Եբր. քաւ լիցի Աստուծոյ ամպարշտել, և Ամենակալին՝ աղմըկել զիրաւունս.(11)Զի հատուցանէ նա մարդոյ ըստ գործոց իւրոյ և ըստ ճանապարհի առն տայցէ գտանել նմա ։ (12) Համարիցի՞ս զԱստուծոյ
[3]Եբր. Ո՞ յանձն արար նմա զերկիր, եւ ո՞ եդ զաշխարհ համօրէն ի կարգի։ [4]Եբր. եւ մարդ ի հող դարձցի։(16)Արդ թէ [5]Եբր. Մի թէ որ ատէն զարդարութիւն իշխիցէ՞, և զՀզօրն արդար առնիցե՞ս ամպարիշտ ։ (18) Որ ասէ (կամ, մի թէ ասիցի՞) ցարքայ՝ Անօրէն, եւ Զար՝ ցիշխանս ։ (19) Որ ոչ առնու ակն իշխանաց, և ոչ մեծարէ զայր մեծատուն քան զաղքատ , զի գործ ձեռաց նորա են ամենեքին ։ (20) Վաղվաղակի մեռանիցին , եւ ի մէջ գիշերի խռովեսցի ժողովուրդն եւ անցցեն , եւ զօրեղք բարձցին ի միջոյ առանց ձեռաց ։ (21) Զի աչք նորա ի վերայ ճանապարհի մարդոյ , եւ զամենայն գնացս նորա տեսանէ։ (22) Ոչ խաւար եւ ոչ ստուեր մահու ի ծածկել զորս գործեն զանօրէնութիւն։ (23) Զի ոչ զնիիցէ զմարդն ընդ երկար , յերթալ նորա առ Աստուած ի դատաստան ։ (24) Խորտակէ զհզօրս որոց ոչ գոյ թիւ , եւ կացուցանէ զայլս փոխանակ նոցա ։ (25) Վասն որոյ [6]Եբր. Իբրեւ զամպարիշտս եհար զնոսա ի տեղւոջ տեսանելեաց ։ (27) Զի խոտորեցան ի հետոյ նորա , եւ զամենայն ճանապարհս նորա ոչ իմացան։ [7]Եբր. Եթէ տացէ նա հանգիստ, ո՞ պատժեսցէ . եթէ [8]Եբր. Զի պարտ է ասել ցԱստուած՝ Կրեցի պատուհաս , ոչ եւս յանցեայց ։ (32) Զոր ոչն տեսանեմ, դու ուսո ինձ . [9]Եբր. առ իս [10]Եբր. լուիցէ ինձ [11]Եբր. Իցի՜ւ փորձէր Յոբ մինչեւ ի սպառ, զի ետ պատասխանի իբրեւ զարս անզգամութեան ։ (37) Զի ի վերայ մեղաց իւրոց յաւելու յանցուածս . ի միջի մեր ծափս հարկանէ , եւ յաճախէ զբանս իւր ընդդէմ Աստուծոյ ։

Գլ. ԼԵ

1 Կրկնեալ անդրէն Եղիուսայ ասէ, (2) Զի՞նչ
խրատունս համարեցար զայդ. [1]ո՞վ ես դու
զի ասես թէ Արդար եմ առաջի Տեառն.
3 Եւ կամ ասես՝ թէ Մեղայ, զի՞նչ արա-
4 րից:" Ես տաց քեզ պատասխանի, եւ
5 [2]երեցուն բարեկամացդ քոց": Հայեաց
յերկինս եւ տես, նշմարեա զամպս՝ որ-
6 չափ բարձր են ի քէն: Եթէ մեղար՝ զի՞նչ
գործեցես[3], եւ եթէ բազում անօրինե-
7 ցար՝ զի՞նչ կարօղ ես առնել[3]: Արդ եթէ
արդար իցես՝ զի՞նչ տայցես նմա, կամ
8 զի՞նչ առցէ ի ձեռաց քոց: Առն նմանոյ
քեզ ամպարշտութիւնն քո, եւ որդւոյ
9 մարդոյ արդարութիւնն քո: Ի բազմու-
թենէ զրպարտեալք աղաղակեսցեն, ա-
10 ղաղակեսցեն ի բազկէ բազմաց: Եւ ոչ
ասաց՝ թէ Ո՞ւր է Աստուած որ արար
11 [4]զայս, Որ պահէ զպահս գիշերականս,
որ մեկնէ զիս ի չորքոտանեաց երկրի եւ
12 ի թռչնոց երկնից:" Անդ աղաղակեսցեն՝
եւ մի՛ լուիցէ, [5]զի այն պատահումն ի
13 հպարտութենէ չարեաց է. Զի զանկար-
գութիւնս տեսանել Տէր ոչ կամի. զի
ինքն Ամենակալն տեսանօղ է այնոցիկ՝
որ կատարեն զանօրէնութիւն, եւ փրկես-
14 ցէ զիս: Դատեաց առաջի նորա, եթէ
15 կարասցես գովել զնա որպէս էն: Եւ
արդ քանզի չէ որ կրեաց զբարկութիւն
նորա, եւ ոչ որ գիտաց զյանցանս իւր
16 յոյժ." Ապա ունայն Յոբ զուր բանայ
զբերան իւր, եւ ծանրացուցանէ ան-
գիտութեամբ զբանս:

Գլ. ԼԶ

1 Կրկնեալ անդրէն Եղիուսայ ասէ, (2) Մնա
ինձ տակաւին սակաւիկ մի, զի ուսու-
ցից քեզ. զի տակաւին գոն յիս [6]բանք.
3 Առեալ ի հեռաստանէ զհանճար [7]իմ:
4 Արդեամբք զիրաւունս իմ խօսեցայց
ճշմարտութեամբ, եւ ոչ անիրաւ բանս
5 տարապարտուց իմացեալ: Գիտեա զի
Տէր ոչ մերժէ զանմեղն. հզօր է զօ-
6 րութեամբ: Զսիրտ ամպարշտի" ոչ կեն-
դանացուսցէ. եւ իրաւունս տացէ աղ-
7 քատի: Ոչ արկցէ զաչս իւր յարդարոյ.
եւ [8]որ զտանի առաջի նորա՝ ընդ թա-
գաւորս է յաթոռ", եւ նստուսցէ զնոսա
8 ի սպառ՝ եւ բարձրասցին: [9]Եւ չարք"
կապեալք ձեռակապօք՝ վարակեսցին տո-
9 ռամբք տնանկութեան, Պատմեսցէ նո-
ցա զգործս նոցա, եւ զյանցանս նոցա
10 թէ զօրասցին: Եւ [10]արդարոյն լուիցէ",
եւ ասասցէ՝ զի դարձցին յանիրաւու-
11 թենէ: Եթէ լուիցեն եւ ծառայեսցեն
նմա, կատարեսցեն զաւուրս իւրեանց
ի բարութիւնս, եւ զամս իւրեանց ի վա-
12 յելչութիւնս: [11]Բայց զամպարիշտս ոչ
կեցուսցէ, զի ոչ կամեցան նոքա ճա-
նաչել զՏէր, եւ զի խրատեալք եւ ան-
13 հնազանդք էին:" Կեղծաւորք սրտիւք
կրդեսցեն զսրտմտութիւն, ոչ զու-
14 ժեսցեն զի կապեաց զնոսա: Մեռցին յերի-
տասարդութեան անձն նոցա, եւ կեանք
15 նոցա [12]խոցոտեալք ի հրեշտակաց, Փո-
խանակ զի նեղեցին զտկարն եւ զան-
զօրն. եւ իրաւունս հեզոց հանցէ, եւ
զերծոյց զքեզ ի բերանոյ թշնամւոյ:
16 Անդունդք որոց ատրածումն ի ներքոյ
իւր. եւ էջ սեղան քո լի պարարտու-
17 թեամբ: Մի՛ պակասեսցեն իրաւունք
արդարոյ. սրտմտութիւն ի վերայ ամ-
18 պարշտաց հասցէ. Վասն ամպարշտու-
թեան կաշառաց՝ զոր ընդունէին անի-
19 րաւութեամբ: Մի՛ թիւրեսցեն զքեզ

[1] Եբր. զի ասես թէ Արդար եմ քան զԱստուած: (3) Զի ասես, Զի՞նչ օգտիցես. զի՞նչ շահեցայց քան զմեղս իմ: [2] Եբր. բարեկամացդ քոց ընդ քեզ [3] Եբր. — չեշէն յ — եւ —, Նմա [4] Եբր. զիս. տայ երգել ի գիշերի, (11) Որ ուսուցանէ զմեզ քան զչորքոտանիս երկրի, և քան զթռչունս երկնից իմաստունս առնէ զմեզ: [5] Եբր. յերեսաց հպարտութեան չարաց: (13) Արդարեւ ունայնութեան ոչ լուիցէ Աստուած, եւ Ամենակալն ոչ հայեսցի ի նա: (14) Եթէ ասիցես, Ոչ տեսանեմ զնա, դատաստան առաջի նորա, եւ յուսա ի նա: (15) Եւ արդ, զի ոչ արար այց բարկութեամբ իւրով, եւ ոչ քննեաց զանօրէնութիւն սաստկութեամբ. [6] Եբր. բանք զԱստուծոյ [7] Եբր. իմ, եւ Արարչին իմում տաց իրաւունս: (4) Զի արդարեւ չեն սուտ բանք իմ, կատարեալ ոք գիտութեամբ՝ ընդ քեզ է: (5) Ահա Աստուած հզօր է, սակայն ոչ արհամարհէ զոք. հզօր է զօրութեամբ սրտի: (6) Զամպարիշտն [8] Եբր. ընդ թագաւորս դնէ զնոսա յաթոռ [9] Եբր. Եւ եթէ [10] Եբր. բացցէ զունկն նոցա ի խրատ [11] Եբր. Ապա եթէ ոչ լուիցեն, ընդ սուր հանցին, և մեռցին յանգէտս: [12] Եբր. ի մէջ պղծոց: (15) Զերծուսցէ զնեղեալն ի նեղութենէ իւրմէ, եւ բացցէ զունկն նորա ի թշուառութեան: (16) Զերծուցանէր եւ զքեզ ի բերանոյ նեղչի եւ հանէր ի դեւր ուր չիցէ նեղութիւն, եւ որ ի սեղանի քում էր՝ լնոյր պարարտութեամբ: (17) Եւ եթէ զիրաւունս ամպարշտին լցեր, դատաստան եւ իրաւունք կալցին զքեզ: (18) Եւ զի գոյ բարկութիւն, գուցէ բարձցէ զքեզ հարուածով. յայնժամ բազմութիւն քաւութեան չկարիցէ թափել զքեզ: (19) Միթէ համարիցի՞ ինչ զմեծութիւն քո.

մտօք կամակարութեան խնդրուածոյ՝
20 յորժամ ի վերայ լիցին ակարք։ Եւ զա-
մենայն զօրաւորս զօրութեամբ մի՛ ձգես-
ցես ի գիշերի՝ ելանել ժողովրդոց փո-
21 խանակ նոցա․ Այլ զգոյշ լեր, զուցէ
գործեսցես զանպատեհս․ քանզի զնա
22 փրկեսցես յաղքատութենէ։ Ահա Հզօրն
զօրացուսցէ զօրութեամբ իւրով․ քան-
23 զի ո՞վ է իբրեւ զնա զօրաւոր․ կամ ո՞վ
է որ քննէ զգործս նորա, կամ ո՞վ է որ
ասիցէ՝ Անիրաւս գործեաց զոր գործեաց։
24 Յիշեա զի մեծամեծ են գործք նորա,
25 զոր սկսան արք արդարք։ Ամենայն մարդ
տեսեր ինքեամբ, որչափ խոցոտեալ են
26 մարդիկ։ Ահա Հզօրն սաստիկ է, եւ ոչ
իմասցուք, թիւ ամաց նորա անսպառ։
27 Թուեալ են նմա շիթք անձրեւի, եւ
28 զեղցին անձրեւով յամպս։ Երկնեսցեն
հնացեալք․ հովանեացոյց զամպս ի վերայ
անբաւ մարդկան, միգացին ի վերայ
բազում մարդկան։ Ժամանակ եդ ա-
նասնոց, եւ գիտեն զկարգ ծննդեան։ Ի
վերայ այսր ամենայնի ո՞չ լիցին զար-
մացեալ միտք քո, ո՞չ սարսիցէ սիրտ
քո ի մարմնի քում․ զի արար զմեծա-
մեծս զոր ոչ գիտէաք։ Հրաման տայ
ձեան՝ թէ Լեր ի վերայ երկրի, եւ ձմե-
րայնւոյ անձրեւոյ՝ զզօրութիւնս իւր-
եանց։ Ի ձեռն ամենայն մարդոյ կնքէ,
զի ծանիցէ ամենայն մարդ զիւր ակա-
29 րութիւն։ Եթէ իմանայցե՞ս զտարածա-
նել ամպոյ, զհաւասարութիւն խորանի
30 նորա։ Ահա ձգէ ի վերայ նորա ճանա-
պարհաւ, եւ զարմատս ծովու ծածկեաց.
31 Զի նոքօք դատեսցի զժողովուրդս, տացէ
32 կերակուր զօրացելոյն։ Ի ձեռս ծած-
կեաց զլոյս, եւ եա պատուէր վասն
33 նորա պատահելոյ։ Պատմեսցէ զնա բա-
րեկամաց իւրոց, եւ զստացուածոց եւ
զանիրաւութենէ։"

## Գլ. ԼԷ

1 Եւ ի վերայ այնորիկ խռովեցաւ սիրտ
2 իմ, եւ ծորեաց ի տեղւոջէ իւրմէ։ [1]Լուր
լուր զբարկութեան սրտմտութեան
Տեառն, եւ խորհուրդ ի բերանոյ նորա
3 ելցէ։" Ի ներքոյ ամենայն երկնից [2]իշ-
խանութիւն նորա", եւ լոյս նորա ի վե-
4 րայ ծագաց երկրի։ Զկնի նորա գոչես-
ցէ բարբառ, որոտասցէ ձայնիւ բարձ-
րութեան իւրոյ, եւ ոչ [3]փոխանակեսցէ
5 զնոսա զի լսելի արասցէ զձայն իւր։ Եւ
որոտասցէ Հզօրն սքանչելի բարբառով
իւրով․ քանզի արար մեծամեծս՝ զոր ոչ
6 գիտէաք։ Հրաման տայ ձեան թէ Լեր
յերկրի, եւ [4]ձմերայնւոյ անձրեւաց բան
7 զօրութեան իւրեանց"։ Ի ձեռին ամե-
նայն մարդոյ կնքէ, զի ծանիցէ ամե-
8 նայն մարդ [5]զիւր ակարութիւն"։ Մտին
գազանք ի գաղարս, զօղեցին ի խշտիս։
9 Ի շտեմարանաց ելանեն [6]ցօղք, եւ ի
10 բարձրաւանդակաց ցուրտ․ Եւ ի շնչելոյ
Հզօրին [7]տացէ սառամանիս․ յեղյեղու
11 զջուրս որպէս եւ կամի․ Եւ զընտիր
ամպ ցանեսցէ․ ցրուէ մէգ զլոյս նորա,
12 եւ ինքն դարձուցէ զշրջանակս։ Ուր
կամեցաւ՝ եդ զգործ նոցա, եւ զամե-
նայն ինչ զոր հրամայեսցէ նոցա․ սոքա
կարգեալ են առ ի նմանէ ի վերայ երկ-
13 րի։ Եթէ՛ ի խրատ, եւ եթէ՛ յերկիր իւր,
14 եթէ՛ յողորմութիւն՝ գտցեն զնա։" Ունկն
դիր այսմիկ, Յոբ, կաց եւ [8]խրատեաց
15 զզօրութիւն Տեառն։ Գիտեմք զի Ա-

ոչ զոսկի և ոչ զամենայն զօրութիւն հարստութեան։ (20) Մի՛ ցանկար գիշերոյ, յորժամ ժողովուրդք անհետ լինին ի տեղւոջ իւրեանց։ (21) Զգոյշ լեր չհայել յանիրաւութիւն, զի ընտրեցեր զայն առաւել քան զթշուառութիւն։ (22) Ահա Աստուած բարձրեալ է զօրութեամբ իւրով. ո՞ իբրեւ զնա ուսուցանիցէ. (23) Ո՞ եցոյց նմա զճանապարհ իւր, և ո՞ ասաց. Անիրաւս գործեցեր։ (24) Յիշեա զի մեծարեսցես զգործ նորա զոր երգեն մարդիկ։ (25) Ամենայն որ տեսանէ զայն, ի հեռաստանէ գիտէ մարդ։ (26) Աւասիկ մեծ է Աստուած, և մեք ոչ գիտեմք. թիւ ամաց նորա անքնին են. (27) Զի ձգէ նա զշիթս ջրոց. կաթեցուցեն անձրեւ ի գոլորշւոյ նորա, (28) Զոր հոսեն ամպք, հեղուն առատութեամբ ի վերայ մարդկան։ (29) Նաև եթէ իմանայցէ՞ ոք զծաւալել ամպոց, զգոչիւն վրանի նորա։ (30) Ահա տարածէ ի վերայ նորա զլոյս իւր, և զխորս ծովու ծածկէ։ (31) Զի նոքօք դատեսցի զազգս, ջամբէ կերակուր առատութեամբ։ (32) Յափս իւր թաքուցանէ զփայլակն, և տայ նմա պատուէր յո՛ պատահիցէ։ (33) Պատմեսցէ զնմանէ որոտումն նորա. խաշինք եւս զգիտեն որ յարիցէ։

[1] Եբր. Լսելով լուիջիք զբարբառ ձայնի նորա, և զշաչիւն որ ելանէ ի բերանոյ նորա։ [2] Եբր. առաքէ զնա [3] Եբր. յապաղեսցէ [4] Եբր. տարափոյ անձրեւի և յորդութեան անձրեւաց զօրութեան իւրոյ [5] Եբր. զոր արար նա [6] Եբր. մրրիկք [7] Եբր. տացին սառամանիք և լայնութիւն ջրոց՝ յանձկի։ (11) Նա եւ պարզութիւն փարատէ զմէգ, եւ լոյս նորա ցրուէ զամպ։ (12) Եւ զառնան շուրջանակի խորհրդով նորա, առնել զամենայն զոր ինչ հրամայեսցէ ի վերայ երեսաց երկրի։ (13) Եթէ՛ ի խրատ, եթէ՛ յերկիր իւր, եթէ՛ յողորմութիւն փութէ զնա։ [8] Եբր. ի միտ առ զսքանչելիս Աստուծոյ։ (15) Գիտիցե՞ս,

տուած եզ զգործս իւր. լոյս արար ի
16 խաւարի։ Գիտէ զքննութիւն ամպոց.
արհաւիրք են յանցանք չարագործաց։
17 Եւ քո ջերմ պատմուճան հանդարտեալ
18 կայ ի վերայ երկրի։ Ի հարաւոյ հաս-
տատեսցես ընդ նմա ի հնութիւնս, զօ-
րացուցանել իբրեւ զտեսիլ եղեման։
19 Բայց ընդէ՞ր խակ, աղէ ուսո զիս. զի՞նչ
ասասցուք նմա, եւ դադարեսցուք ի
20 բազումս խօսելոյ։ Միթէ մատեա՞ն կամ
դպի՞ր մերձ կայցէ առ իս, զի զմարդ-
21 կան դրեալ լռեցուցից։ Ոչ ամենեցուն
է լոյս տեսանելի, փայլածուն է ի հնու-
թիւնս, որպէս որ ի նմանէն ի վերայ
22 ամպոց։ Ի հիւսիսոյ ամպ ոսկէճաճանչ.
ի վերայ այսոցիկ մեծ են փառք եւ պա-
23 տիւ Ամենակալին. Եւ ոչ գտանեմք զայլ
ոք նմանօղ զօրութեան նորա. որ զար-
դարն դատի՝ ո՞չ համարիցիս լսել նմա։
24 Վասն որոյ երկիցեն ի նմանէ մարդիկ,
երկիցեն ի նմանէ եւ իմաստունք սրտիւք։"

## ԳԼ. ԼԸ

1 [1] Յետ դադարելոյ Եղիուայ ի խօսե-
լոյ, ասէ Տէր ցՅոբ ի մրրկէ եւ յամպոյ.
2 Ո՞ է դա՝ որ թաքուցանէ յինէն զխոր-
հուրդս ժողովեալ զբանս ի սրտի, եւ
3 համարի յինէն թաքուցանել։" Պնդեա
իբրեւ այր զմէջ քո, հարցից զքեզ՝ եւ
4 տուր ինձ պատասխանի։ Ո՞ւր էիր մինչ
ես հիմունս արկանէի երկրի. պատմեա
ինձ եթէ խելամուտ իցես հանճարոյ։
5 Ո՞վ եդ զչափ դորա՝ թէ գիտիցես, կամ
6 ո՞վ արկ ի վերայ դորա լար։ Ցէ՞ր վե-
րայ հաստատեցան [2] աղխք դորա, ո՞վ է
7 որ արկ զվէմն անկեան ի դմա։ Յորժամ
[3] եղեն աստեղք ծերք, ամենայն հրեշ-
տակք աստեղաց օրհնեցին զիս մեծա-
ձայն, եւ ամենայն հրեշտակք իմ գո-
8 վեցին։ Փակեցի" զծով դրամբք, յորժամ
9 ծնաւ յորովայնէ մօր իւրոյ ելանել։ [4] Եդի
նմա զմէգ ի հանդերձ, եւ զմառախուղ
10 նմա ի խանձարուրս։ Եդի նմա սահմանս՝
11 եղեալ փականս եւ դրունս, Ասացի,
Ցայդ վայր եկեսցես՝ եւ այլ մի՝ անցա-
նիցես, այլ [5] այդրէն ի քեզ խորտակես-
12 ցին ալիք քո։ Եթէ առ քե՞ւ կարգայի
զլոյսն առաւօտին. արուսեակն եաես
13 զկարգ իւր" Հասանել ի վերայ թեւոց
երկրի, թօթափել զամպարիշտս ի նմա-
14 նէ։ [6] Կամ թէ քո՞ առեալ զհողն կաւ՝
ստեղծեր կենդանի, եւ խօսուն եդիր
15 զնա յերկրի։ Եւ մերժեցե՞ր զլոյսն յամ-
պարշտաց, զբազուկս ամբարտաւանից
16 խորտակեցե՞ր։" Հասեա՞լ իցես յակն ծո-
վու, եւ ընդ հետս անդնդոց շրջեցա՞ր։
17 Բանայցե՞ն քեզ [7] ահիւ դրունք մահու,
[8] բարապանաց դժոխոց ի տեսանել զքեզ՝
18 սարսիցե՞ն"։ Խելամո՞ւտ իցես լայնու-
թեան [9] առ ի ներքոյ երկնից", աղէ
պատմեա ինձ՝ ո՛րչափ իցէ։
19 Զի՞նչ երկիր իցէ յորում լոյսն ագանիցի,
20 կամ զի՞նչ տեղի խաւարի. [10] Տանիցի՞ս զիս
ի սահմանս նոցա, եթէ խելամո՞ւտ իցես
21 շաւղաց նոցա։" Թէպէտ գիտիցես եւ
ընդ այն ժամանակս խակ ծնեալ իցես,
22 եւ թիւ աւուրց քոց բազում իցէ։ Եր-
թեա՞լ իցես ի շտեմարանս ձեան, եւ
23 զգանձս կարկտի տեսեա՞լ իցես։ [11] Համ-
բարեա՞լ կայցէ քեզ ի ժամանակս թշնա-
մեաց", յօր մարտի եւ պատերազմի։

---

զմարդ հրաման տայ նոցա Աստուած, և ծագէ լոյս յամպոց իւրոց։ (16) Գիտիցե՞ս զկշիռ ամպոց, զսքանչելիս որոյ կատարեալն է գիտութեամբ։ (17) Ընդէ՞ր ջերմ իցեն հանդերձք քո, ի խաղաղելն զերկիր ի հարաւոյ։ (18) Տարածեցե՞ր ընդ նմա զերկինս որ հզօրն են իբրեւ զհայելի ձուլեալ։ (19) Ուսո մեզ զինչ ասելոց իցեմք նմա, չեմք կարող կարգել զբանս մեր առ մթութեան։ (20) Միթէ պատմեսցի՞ նմա եթէ խօսեցայց. եթէ ասիցէ ոք, ապաքէն կլանիցի։ (21) Եւ այժմ ոչ կարեն հայել ի լոյսն որ պայծառ է յօդս, յորժամ անցցէ հողմ եւ սրբեսցէ զնոսա։ (22) Ի հիւսիսոյ գայ ոսկի. մեծափառանաց վայելչութիւն գոյ առ Աստուծոյ։ (23) Ամենակալ է, ոչ կարեմք գտանել զնա, մեծ է զօրութեամբ եւ իրաւամբ եւ արդարութեամբ բազմաւ, ոչ տրտմեցուցանէ (կամ, տայ պատասխանի)։ (24) Վասն որոյ երկիցեն ի նմանէ մարդիկ. ոչ հայի նա եւ ոչ յոք յիմաստնոց սրտիւք։

[1] Եբր. Յայնժամ Տէր ի մրրկէ պատասխանի տուեալ Յոբայ՝ ասէ. (2) Ո՞վ է դա որ խաւարեցուցանէ զխորհուրդ բանիւք առանց գիտութեան։

[2] Եբր. խարիսխք [3] Եբր. երգէին ի միասին աստեղք առաւօտուն, եւ ցնծային ամենայն որդիք Աստուծոյ։ (8) Ո՞ փակեաց [4] Եբր. Յորժամ եդի [5] Եբր. աստ դադարեսցի ամբարտաւանութիւն ալեաց քոց։ (12) Միթէ յաւուրս քո հրամայեցե՞ր առաւօտուն. եւ տո՞ւր գիտել այգուն զտեղի իւր, [6] Եբր. Երկիր փոխեսցի իբրեւ զկաւ կնքոյ, եւ ամենայն ինչ կացցէ իբրեւ զպատմուճան։ (15) Եւ մերժի յամպարշտաց լոյս նոցա, եւ բազուկ բարձրացեալ խորտակի։ [7] Եբր. դրունք [8] Եբր. և զդրունս ստուերի մահու տեսե՞ր [9] Եբր. երկրի [10] Եբր. Զի կալցիս զնա ի սահմանի իւրում, եւ լիցիս խելամուտ շաւղաց տան նորա։ [11] Եբր. Զորս համբարեալ պահեցի ի ժամանակ նեղութեան

24 ¹Ուստի՞ ելանիցէ եղեամն, կամ սփռի-
25 ցի հարաւ ի ներքոյ երկնից։ Ո՞ պատ-
րաստեաց զհոսանս սաստիկս անձրեւաց,
եւ զճանապարհս ամպրոպաց տեղեալ
26 յերկիր. Ուր՝՝ ոչ գոյ մարդ, յանապատ
27 յանմարդի, Յագեցուցանել զանկոխն եւ
զանշէնն, եւ բղխեցուցանել զբոյս դա-
28 լարւոյ։ Ո՞ է հայր անձրեւի, եւ ո՞վ է
29 որ ծնաւ զշաղս ցօղոյ։ Յո՞յր արգանդէ
ելանէ սառն, եւ զեղեամն ո՞ ծնաւ յեր-
30 կինս, ²Որ իջանէ իբրեւ զջուր ծորեալ.
եւ զերեսս երկնից ո՞ հալեաց։՝՝
31 Խելամո՞ւտ լինիցիս կարգի Բազմաստեղաց,
եւ քո բացեա՞լ իցէ զպատուարակ Հայկին։
32 Կամ բանայցե՞ս ³զՄազարովթն ի ժամա-
նակի իւրում, եւ ⁴զԳիշերավարն ի վե-
րայ վարսից իւրոց ածիցե՞ս ընդ նոսա։
33 Գիտիցե՞ս զշրջանակս երկնից, կամ առ
հասարակ զլեալն ի ներքոյ երկնից։՝՝
34 Կոչիցե՞ս զմէգ բարբառով, ⁵եւ դողու-
թեամբ լի սաստիկ ջրով լուիցէ քեզ։՝՝
35 Արձակիցե՞ս շանթս՝ եւ գնայցեն, եւ ա-
36 սիցեն ցքեզ ⁶թէ զի՞նչ է։ Ո՞վ ետ կա-
նանց իմաստութիւն ոստայնանկութեան՝
37 կամ հանճար նկարակերտութեան։՝՝ Ո՞
թուէ զամպս իմաստութեամբ, ⁷եւ զեր-
38 կինս յերկիր խոնարհեցոյց. Եւ հեղեալ
կայ իբրեւ զհող փոշի. մածուցի զնա
39 իբրեւ զվիմաւ խորանարդ՝՝։ Որսայցե՞ս
առիւծուց կերակուր, եւ ⁸զանձինս վի-
40 շապաց յագեցուցանիցե՞ս։ Սարսիցեն՝՝
ի խշտիս իւրեանց, եւ նստցին դարա-
41 նակալք ի մայրիս։ Ո՞ պատրաստեաց
ագռաւուց կերակուր, զի ձագք նոցա
առ Տէր աղաղակեցին, մոլորեալք խնդրեն
կերակուր։

¹Եբր. Ո՞րով ճանապարհաւ բաժանի լոյս կամ սփռի հողմն արեւելեան ընդ երկիր։ (25) Ո՞վ եբաց անցս հեղեղաց, եւ ճանապարհ փայլատականց որոտման, (26) Տալ անձրեւ ի վերայ երկրի, ուր ²Եբր. Իբրեւ զվէմ ջուրք թաքչին, եւ երեսք անդնդոց պնդանան։ ³Եբր. Թ[illegible] լինել Զոդիակոս (կենդանակերպ) ⁴Եբր. առաջնորդել Արջոյ ընդ որդւոց իւրոց։ (33) Գիտիցե՞ս զօրէնս երկնից, կամ դիցե՞ս զիշխանութիւն նորա յերկրի։ ⁵Եբր. զի յորդութիւն ջրոց ծածկեացէ զքեզ։ ⁶Եբր. Ահաւասիկ եմք։ (36) Ո՞վ եդ յերիկամունս զիմաստութիւն, կամ ո՞վ ետ հանճար մտաց։ ⁷Եբր. կամ թափել զտիկս յերկնից։ (38) Յորժամ փոշին լինիցի ի զանգուած, եւ կոշտք հողոյ մածնուցուն ⁸Եբր. զքաղց կորեանց յագեցուցանիցե՞ս, (40) Յորժամ կծկին

ԳԼ. ԼԹ

1 Եթէ գիտիցե՞ս զժամանակ ծննդեան
յամուրայ քարանձաւաց, զգուշանայ-
2 ցե՞ս երկանց եղանց։ Թուիցե՞ս լիով
զամիսս ծննդեան նոցա, ⁹լուծանիցե՞ս
3 զերկունս նոցա։ Սնուցանիցե՞ս զման-
կունս նոցա առանց երկիւղի, մերժի-
4 ցե՞ս ի նոցանէ զերկունսն։ Փրծանիցին
որդիք նոցա, բազմանայցեն ի ծննդեան
իւրեանց, ելանիցեն՝ եւ անդրէն ոչ
կրկնիցին՝՝։
5 Ո՞ եթող զցիռ ազատացեալ, ո՞վ եյած
6 զկապանս նորա։ Եդի նմա կայանս զա-
ռապարս, եւ բնակութիւն նմա զաղ-
7 տաշտունս։ Ծաղր առնէ զբազմամբոխ
քաղաքաց, եւ զբամբասանս հարկահա-
8 նաց ոչ լսէ։ Դիտէ զլերինս արօտի իւրոյ,
եւ զհետս ամենայն դալարւոյ շրջի խնդրել։
9 Եթէ կամիցի՞ քեզ միեղջերուն ծառա-
10 յել, կամ հանգչել առ մսուր քո։ Կա-
պիցե՞ս սանձափոք լուծ նմա, կամ ձգի-
11 ցէ՞ ակօս ի դաշտի քում։ Յուսայցե՞ս ի
նա՝ զի բազում է զօրութիւն նորա, եւ
թողուցո՞ւս ի նա զամենայն գործս քո։
12 Հաւատայցե՞ս եթէ հատուցանիցէ քեզ
զսերմանիս, եւ ամփոփիցէ զկալ քո։
13 ¹⁰Թեւք թռուցելոյ նէեղասայ, եթէ
14 յղասցի՞ ասիդն եւ նէսայն՝՝։ Զի արկցէ
յերկիր զձուս իւր, եւ ջեռուսցէ ընդ
15 հողով, Եւ մոռացաւ թէ ոտն ցրուիցէ,
16 եւ գազանք անապատի կոխեսցեն։ Ու-
ծացաւ յորդւոց իւրոց՝ իբրեւ ոչ յիւր-
մէ, ի զուր վաստակեցաւ առանց երկիւ-
17 ղի։ Զի լռեցոյց Աստուած ի նմանէ զի-
մաստութիւն, եւ ոչ ետ նմա բաժին ի
18 հանճարոյ։ Ի ժամանակի բարձրասցի ի
բարձունս. ծաղր առնէ զերիվարաւ եւ
զհեծելով նորա։
19 Եթէ դո՞ւ ազուցեր ձիոյ զօրութիւն,
եւ զգեցուցեր ¹¹զրահ ընդ պարանոցաւ
20 նորա. ¹²Արկեր զնովաւ սպառազինու-
թիւն, եւ փառս յանձանց նորա զյանդգնու-
21 թիւն։՝՝ Որոտայ ի դաշտի եւ զափր հա-

⁹Եբր. եւ գիտիցե՞ս զժամանակ ծննդեան նոցա։ (3) Կորացեալ ծնանին զձագս իւրեանց, մերժեն զերկունս իւրեանց։ (4) Զօրանան ձագք նոցա, անանին ի դաշտի. երթան եւ անդրէն ոչ դառնան առ նոսա ¹⁰Եբր. Թեւք ջայլեմանց ցնծան. միթէ իցե՞ն նման թեւոց և փետրոց արագլի ¹¹Եբր. բաշ. կամ. որոտում ¹²Եբր. Տացե՞ս նմա ոստնուլ իբրեւ զմարախ. փառք փնչելոյ նորա ահեղ։

22 տանէ, ելանէ ի դաշտ զօրութեամբ. Ի
պատահել նետից՝ արհամարհէ, եւ ոչ
23 դարձցի յերկաթոյ։ Ի վերայ նորա շա-
ռաչէ աղեղն եւ սուսեր, եւ շարժին
24 վահանք եւ նիզակք. Եւ բարկութեամբ
ապականէ զերկիր. եւ ոչ հաւատայ՝
25 մինչեւ փող հարկանիցի։ Եւ իբրեւ փող
հարկանի, նա Վաշ վաշ կարդայ. ի հե-
ռաստանէ առնու զհոտ պատերազմի՝
[1]վաղս ոստնելով եւ փնչելով։
26 Եթէ ի քումմէ՞ իմաստութենէ [2]եկաց
բազէ տարածեալ զթեւս, անշարժ զի-
տէ ընդ հարաւ։
27 Կամ թէ քո՞ հրամանաւ վերանայ ար-
ծուի, եւ [3]անկղ ի վերայ բունոյ իւրոյ
28 Նստեալ դադարիցէ ի քարանձաւս վի-
29 մաց եւ ի ծածուկս. Անդ կայ եւ խնդրէ
զկերակուր, ի հեռաստանէ դիտեն աչք
30 իւր։ Եւ ձագք նորա արեամբ թաթա-
ւին. ուր ուրեք իցէ դէշ՝ անդ վաղվա-
ղակի գտանի։
31 *Եւ պատասխանի ետ Տէր [4]Աստուած
32 Յոբայ՝ եւ ասէ. Մի թէ զդատաստան ո՞ք
Բռնակալին թիւրիցէ՞, եւ յանդիմանիցէ՞
զԱստուած, եւ տայցէ՞ նմա պատասխանի։
33 Կրկնեալ անդրէն Յոբայ ասէ ցՏէր,
34 [5]Զի՞ եւս տակաւին դատիցիմ, կշտամ-
բեալ եւ յանդիմանեալ. ի Տեառնէ լսեմ
զայսպիսի բանս. զի ես ոչ ինչ մի եմ.
զի՞նչ տաց առ այդ պատասխանի, բայց
35 եթէ ափ ի բերան լինիցիմ։ Մի անգամ
[6]խօսեցայ, եւ յերկրորդումն ոչ յաւելից։

Գլ. Խ

1 Դարձեալ կրկնեալ Տէրն յամպոյն՝ ա-
2 սէ ցՅոբ, [7]Ոչ այդպէս, այլ պնդեա իբ-
րեւ այր զմէջ քո. ես հարցից, եւ դու
3 տուր ինձ պատասխանի։ [8]Մի՛ զրնկե-
նուր զդատաստան իմ, եւ մի՛ համարիր
այլ ինչ ազդարարեալ առ քեզ յայտնու-
թիւն, բայց եթէ զի երեւեսցիս ար-
4 դար։ Եթէ բազուկ [9]առ բազուկ իցէ՞ քո
Տեառն, եթէ բարբառո՞ հանգոյն նմա
5 որոտայցես։ Արդ աղէ ա՛ռ բարձրութիւն,
եւ զօրութիւն եւ փառս եւ պատիւ զգեցիր։
6 [10]Առաքեա զհրեշտակս բարկութեամբ,
եւ զամենայն հպարտս խոնարհեցո. եւ
7 չիջո զամբարտաւանս։ Փտեա վաղվա-
8 ղակի զամպարիշտս, Եւ ծածկեա յերկրի
բացէ ի բաց առ հասարակ, եւ լից զերեսս
9 նոցա անարգանօք։ Իսկ յանձի՞ն կալայց
արդեւք՝ եթէ կարող է փրկել աջ քո։
10 Իսկ այդ քո առաջի է, զի գազանք իբրեւ
11 զարջառ խոտ ճարակին. Ահաւանիկ ոյժ
իւր զմիջով իւրով, եւ զօրութիւն զպոր-
12 տիւ որովայնի իւրոյ։ Կանգնեաց զտուտն
իւր իբրեւ զնոճի, ջիղք իւր զմիմեամբք
13 պատեալ։ Կողք իւր պղնձիք, եւ ողն իւր
14 ձոյլ երկաթոյ։ Նա է սկիզբն [11]արարածոց
Տեառն, արարեալ խաղալիկ հրեշտակաց
15 նորա։ Հասեալ ի վերայ առապար լերին՝
արար խնդութիւն չորքոտանեաց ի տար-
16 տարոսն։ Ընդ ազգի ազգի ծառովքն ննջէ,
առ պրտուով եւ եղեգամբ եւ կնիւնով։
17 [12]Հովանոցանան ընդ նովաւ ծառք մե-
ծամեծք հանդերձ ոստովք եւ ձողք
18 հարկուոյ։ Եթէ լինիցի հեղեղ՝ ոչ զգա-
ցէ. յանձնապաստան է, եթէ Յորդանան
19 զիմեսցէ ի բերան նորա։ [13]Յականակապիճս
իւր ընկալցի զնա։ Ի խուսափել նորա
ծակիցե՞ս զռնգունս նորա։
20 [14]Վերացուցանիցե՞ս զվիշապն կարթիւ,
գնիցե՞ս պախուրցս շուրջ զդունչ նորա։
21 Եթէ կապիցե՞ս անուր ի քիթս նորա, ան-
ցուցանիցե՞ս զանդամանդ ընդ կզակս
22 նորա։ Խօսիցի՞ ընդ քեզ հեզութեամբ, եւ
23 կակուղ բարբառով։ Դնիցէ՞ ընդ քեզ
ուխտ, նուաճիցե՞ս զնա ծառայ յաւի-

---

[1] Եբր. զգոչիւն զօրավարաց և զաղաղակ [2] Եբր. թռանիցի բազէ տարածեալ զթեւս իւր ընդ հարաւ [3] Եբր. դնէ զբոյն իւր ի բարձունս * Աստ սկսանի Գլ. Խ ըստ Եբրայեցւոցն [4] Եբր. Յոբայ եւ ասէ, (32) Միթէ որ վիճին ընդ Ամենակալի ուսուցանիցէ՞, որ դատին ընդ Աստուծոյ, տացէ պատասխանի։ [5] Եբր. [illegible] [6] Եբր. խօսեցայ, եւ ոչ տաց պատասխանի [7] Եբր. Պնդեա [8] Եբր. Միթէ ջնջեցե՞ս զդատաստան իմ, արդարացե՞ս զիս անիրաւ

[9] Եբր. իբրեւ Աստուծոյ իցէ՞ քո [10] Եբր. Սրուեա զցասումն բարկութեան քո, և տես զամենայն հպարտ եւ խոնարհեցո զնա։ (7) Տես զամենայն հպարտ, կործանեա զնա, և կոխեա զամպարիշտս ի տեղւոջ իւրեանց։ (8) Ծածկեա զնոսա յերկրի միանգամայն, զերեսս նոցա կապեա ի թաքստեան։ (9) Եւ ես խոստովան եղէց քեզ եթէ փրկեսցէ զքեզ աջ քո։

(10) Ահա եւ Բեհեմովթ զոր ստեղծի ընդ քեզ, խոտ իբրեւ զարջառ ճարակի։ [11] Եբր. ճանապարհաց Աստուծոյ. որ արարն զնա մերձեցուցանէ զսուր իւր։ (15) Զի զպաշար լերինք բերեն նմա, եւ ամենայն գազանք վայրի խաղան անդ։ [12] Եբր. Ծածկեն զնա ծառք փարաւորք հովանեաւ իւրեանց. շուրջ պատեն զնովաւ ուռիք հեղեղատի։ [13] Եբր. Ա՞ կալցի զնա ի հայել նորա, կամ ծակեսցէ՞ որոգայթիւք [14] Աստ սկսանի Գլ. ԽԱ. ըստ Եբրայեցւոցն

24 տմնակսն։ Խաղայցե՞ս դու նովաւ իբ-
րեւ ընդ հաւու, եւ կապիցե՞ս զնա [1]իբրեւ
25 զձագ կաքաւ՞։ Կերակրիցի՞ն նովաւ [2]ա-
զգինք, եւ բաժանեսցե՞ն զնա ազգք Փիւ-
26 նիկեցւոց։ [3]Ամենայն նաւալուղակն ի մի
վայր ժողովեալ, ոչ բարձցեն թեփ մի
ի տանէ նորա, եւ ի նաւս ձկնորսաց
27 խաղամ նորա։ Դնիցես դու զձեռն քո
ի վերայ նորա, յիշատակեալ զպատե-
րազմ [4]որ լինելոց է ի մարմնի նորա, զի
28 այլ ոչ եւս լինիցի։ Ոչ տեսեր զնա, եւ
ոչ ի վերայ բանիցս ասացելոց զարմա-
նայցես։

## Գլ. ԽԱ

1 [5]Ոչ երկնչիցիս՝ զի եւ ինձ պատրաս-
տեալ է. բայց ո՞վ իցէ որ ինձ հակա-
2 ռակ կայցէ. Կամ ո՞վ իցէ որ ինձ ընդ-
դէմ դառնայցէ եւ հանդարտիցէ. եթէ
ամենայն առ ի ներքոյ երկնից իմ է։
3 Ոչ լռեցից վասն նորա, եւ բան Հզօրին
4 ողորմեսցի զուգականին նորա։ Ո՞ մեր-
կասցէ զպատրուակ երեսաց նորա, եւ
ընդ ալխս պատենից նորա ո՞ մտանի-
5 ցէ. Զդրունս երեսաց նորա ո՞ բանայցէ.
6 շուրջ զատամամբք նորա ահ։ [6]Փոր նո-
րա վահանք պղնձիք, յօդք նորա իբրեւ
7 զվէմ զայլախաղ։ Մի զմիոյ կնի կցեալ,
8 եւ օդ ոչ անցցէ ընդ նա։ [7]Այր զեղբօր
զհետ երթիցէ. զմիմեանց կալցին, եւ
9 մի՛ մեկնեսցին։ Ի փռնչելոյ նորա փայ-
լատակունք հատանին, աչք նորա իբ-
10 րեւ զտեսիլ արուսեկի։ Ի բերանոյ նո-
րա զամբարք բորբոքեալք, եւ հատա-
11 նին անկանին շանթք հրոյ։ Ընդ ռըն-
գունս նորա ծուխ ելանէ հնոցի հրոյ
12 կայծականց։ Անձն նորա կայծակունք,
13 եւ բոց ի բերանոյ նորա ելանէ։ Ի պա-
րանոցի նորա բնակէ զօրութիւն, առա-
14 ջի նորա կորուստ ընթանայ։ Անդամք
մարմնոյ նորա մածեալք. [8]եթէ զեղցէ
15 ի վերայ նորա՝ ոչ խլրտեսցին. Զի սիրտ
նորա սպացեալ է իբրեւ զվէմ, եւ հաս-
տատեալ կայ իբրեւ [9]զսալ դարբնաց
16 անշարժ։ Ի խլրտել նորա՝ ահ գազա-
նաց եւ չորքոտանեաց եւ զեռնոց երկ-
17 րի։ Եթէ պատահեսցեն նմա արդունք,
18 ոչ սանանեն զէնք եւ նիզակք։ Քանզի
համարի զերկաթ յարդ, եւ զպղինձ իբ-
19 րեւ զփայտ փուտ։ Ոչ խոցոտէ զնա ա-
ղեղն պղնձի. համարի զումբաքար խոտ.
20 Եւ իբրեւ զեղէգն համարեսցան նմա ու-
ռունք. ծաղր առնէ զշարժումն [10]հրա-
21 լից։ Անկողինք նորա տէգք սրեալք. ա-
մենայն ոսկի ծովու ընդ նովաւ իբրեւ
22 զկաւ անթիւ։ Եռացուցանէ զանդունդս
իբրեւ զկաթսայ, [11]համարի զծով իբրեւ
23 զօշինչ, Եւ զտարտարոսն անդնդոց իբ-
րեւ զգերի մի. համարեցաւ զանդունդս
24 իւր ճեմելի։ Եւ չիք ինչ յերկրի՝ որ նման
է նմա, արարեալ [12]խաղալիկ հրեշտակաց
25 իմոց։ Զամենայն բարձունս տեսանէ,
եւ ինքն է թագաւոր [13]ամենայնի՝ որ ի
ջուրսն են։

## Գլ. ԽԲ

1 Կրկնեալ անդրէն Յոբայ՝ ասէ ցՏէր,
2 Գիտեմ զի կարող ես յամենայնի, [14]եւ
3 տկարանայ ինչ ոչ քեզ։ Ո՞վ է որ ծած-
կէ ի քէն զխորհուրդ՝ խնայեալ ի բանս՝
կարծիցէ թաքուցանել. ո՞ պատմեսցէ
ինձ՝ զոր ոչ գիտէի, զմեծամեծս եւ
զզարմանալիս՝ որոց ոչ էի խելամուտ։
4 Արդ լուր ինձ, Տէր, զի եւ ես խօսե-
ցայց. հարցից զքեզ՝ եւ դու ուսո զիս։
5 Ի լուր ականջաց լսէի զքէն յառաջա-
գոյն, բայց արդ եւ ակն իմ իսկ ետես
6 զքեզ։ Վասն որոյ խոտեցի զանձն եւ
հալեցայ, եւ համարիմ զանձն իմ հող
եւ մոխիր։
7 Եւ եղեւ յետ խօսելոյ Տեառն զբանս
զայսոսիկ ընդ Յոբայ, ասէ Տէր ցԵղի-

[1] Եբր. վասն աղախնաց քոց [2] Եբր. ընկերք [3] Եբր. Լնուցո՞ւս զմորթ նորա աշտէիւք, եւ նիզակօք ձկնորսաց զգլուխ նորա։ [4] Եբր. մի՛ յաւելցես։ (28) Ահա յոյս տանելոյ զնա ընդունայն է, ո՞չ ապաքէն ի տեսիլ նորա զարհուրեսցի մարդ

[5] Եբր. Չիք անագորոյն որ զարթուսցէ զնա, և ո՞վ իցէ որ կացցէ առաջի իմ։ (2) Ո՞ ետ ինձ յառաջագոյն զի հատուցից. ամենայն առ ի ներքոյ երկնից իմ է։ (3) Ոչ լռեցից վասն անդամոց նորա, զզօրութենէ եւ զգեղոյ յարմարածոյ նորա։

[6] Եբր. Հպարտութիւն նորա՝ ամրութիւնք վահանաց, փակեալ իբրեւ զկնիք պնդութեամբ, [7] Եբր. Իւրաքանչիւր ընկերի իւրում յարեալ, [8] Եբր. հաստատեալ

[9] Եբր. զներքին երկան անշարժ։ (16) Յամբառնալ նորա երկիցեն հզօրք, առ ահին խռովեսցին։ [10] Եբր. գեղարդան։ (21) Ընդ նովաւ խեցիք սրեալք. տարածանէ զսուր ի վերայ կաւոյ։ [11] Եբր. դնէ զծով հանդոյն պուտան օծանելեաց։ (23) Զկնի իւր լուսաւորէ շաւիղ. անդունդք թուիցին իբրեւ զհեր ալեւորեալ։ [12] Եբր. զի իցէ աներկեւղ [13] Եբր. ի վերայ ամենայն որդւոց ամբարտաւանութեան [14] Եբր. և ոչ արգելու առ ի քէն խորհուրդ։ (3) Ո՞վ է որ ծածկէ զխորհուրդ առանց գիտութեան. արդարեւ խօսէի

փաղ Թեմնացի, [1]Մեղար դու, եւ եր-
կոքին բարեկամք քո. զի ոչ խօսեցա-
րուք առաջի իմ ճշմարիտ, եւ ոչ ինչ՝՝
8 իբրեւ զծառայ իմ զՅոբ։ Բայց արդ ա-
ռէք զուարակս եւթն եւ խոյս եւթն,
եւ երթայք առ ծառայ իմ Յոբ, եւ ա-
րասցէ ողջակէզս վասն ձեր. եւ Յոբ
ծառայ իմ արասցէ աղօթս վասն ձեր։
Զի թէ ոչ նմա ակն առեալ էր, [2]եւ ե-
թէ ոչ վասն նորա էր, կորուսեալ էր
իմ արդեւք զձեզ. զի ոչ խօսեցարուք
ճշմարտութիւն զծառայէ իմմէ զՅոբայ՝՝։
9 Եւ գնաց Եղիփազ Թեմնացի եւ Բաղ-
դատ Սաւքեցի եւ Սոփար [3]Մինեցի, եւ
արարին որպէս հրամայեաց նոցա Տէր,
եւ [4]եղոյծ զմեղս նոցա վասն Յոբայ։
10 Եւ Տէր աճեցոյց զՅոբ. եւ՝՝ յառնել
նորա աղօթս ի վերայ բարեկամացն՝
[5]եթող զմեղս նոցա՝՝։ Եւ ետ Տէր
կրկին քան որչափ ինչ էրն յառաջագոյն
11 Յոբայ ի յաճախութիւն։ Եւ [5]լուան ա-
մենայն եղբարք նորա եւ քորք նորա
[5]զամենայն անցսն՝ որ անցին ընդ նա,
եւ՝՝ եկին առ նա, եւ ամենեքին ոյք
յառաջագոյն գիտէին զնա. կերան եւ
արբին առ նմա, [6]եւ մխիթարեցին զնա,
եւ զարմացան՝՝ ի վերայ ամենայնի զոր
ած ի վերայ նորա Տէր. եւ ետուն նմա
իւրաքանչիւր մէն մի [7]որոջ, եւ [8]չո-
12 րեքդրամեան մի ոսկի անգիր՝՝։ Եւ Տէր
օրհնեաց զվերջինն Յոբայ քան զառա-
ջինն. եւ էին խաշինք նորա՝ ոչխարք
բեւր եւ չորեքհազար, ուղտք վեց հա-
զարք, լուծք եզանց հազար, էշք մատակք
13 արօտականք հազար։ Եւ ծնան նմա ուս-
14 տերք եւթն, եւ դստերք երեք։ Եւ կո-
չեաց զառաջինն [9]Տիւ, եւ զերկրորդն
Կասիա. եւ զերրորդն [10]Ամաղթեղջեւր։
15 Եւ ոչ գտան համեմատ դստերացն Յո-
բայ ազնուագոյնք [11]ի ներքոյ երկնից՝՝.
եւ ետ նոցա ժառանգութիւն ընդ եղ-
բարս իւրեանց։
16 Եւ եկեաց Յոբ յետ [12]հարուածոցն՝ ամս
հարեւր եւ եւթանասուն. եւ ամենայն ամք
զոր եկեաց երկերիւր քառասուն եւ ութ՝՝.
եւ ետես Յոբ զորդիս իւր եւ զորդիս որդւոց
17 իւրոց՝ ազգ չորրորդ։ Եւ վախճանեցաւ Յոբ
ծերացեալ եւ լցեալ աւուրբք։ [5]Եւ գրեալ
է նմա յառնել ընդ որս Տէր յարուցանէ։

Սա թարգմանի յԱսորի գրոց. բնա-
կէր յերկրին Աւսիտայ, ի սահմանս Եդով-
մայեցւոց եւ Արաբացւոց. յառաջ՝ էր
անուն նորա Յոբաբ. եւ առեալ կին Ա-
րաբացի, ծնաւ որդի՝ որում անուն էր
Ենոն։ Եւ էր հայր նորա Զարեհ, որ-
դի որդւոյն Եսաւայ. եւ մայր նորա Բո-
սորացի. որպէս զի լինել նմա հինգե-
րորդ յԱբրահամէ։ Եւ այս են թագա-
ւորք որ թագաւորեցին յԵդոմ. առա-
ջին Բաղակ Բէովրայ. եւ անուն քա-
ղաքի նորա Դենաբայ։ Յետ Բաղակայ
Յոբաբ՝ որ կոչեցաւ Յոբ։ Յետ նորա Ա-
սովմ, որ էր զօրավար յերկրէն Թեմ-
նացւոց։ Յետ նորա Ադադ որդի Բարա-
դայ, որ կոտորեաց զՄադիամ ի դաշ-
տին Մովաբայ. եւ անուն քաղաքի նո-
րա Գեթեմ։ Եւ որ եկին առ նա բարե-
կամքն, Եղիփազ՝ յորդւոցն Եսաւայ՝
արքայ Թեմնացւոց, Բաղդատ բռնաւոր
Սաւքեցւոց, Սոփար արքայ Մինեցւոց՝՝

[1]Եբր. Բորբոքեցաւ բարկութիւն իմ ի քեզ եւ յերկոսին բարեկամս քո. զի ոչ խօսեցարուք զինէն ուղիղ [2]Եբր. գնոյի ընդ ձեզ ըստ անզգամութեանդ. զի ոչ խօսեցարուք ճշմարտութիւն զինէն որպէս ծառայ իմ Յոբ [3]Եբր. Նաամացի [4]Եբր. արար Տէր մեծարանս երեսաց Յոբայ։(10) Եւ Տէր դարձոյց զդարձուած Յոբայ [5]ՅԵբր. պակասէ [6]Եբր. եւ գթացան ընդ նա եւ մխիթարեցին զնա [7]Կամ, դահեկան [8]Եբր. իւրաքանչիւր մէն մի օղ ոսկի

[9]Եբր. Եմիմա [10]Եբր. Կերէն-Հապուք [11]Եբր. ընդ ամենայն երկիր [12]Եբր. այնորիկ ամս հարեւր եւ քառասուն

# ՑԱՆԿ ՍԱՂՄՈՍԱՑ

Սաղմ.

Վասն հաւատոց և գործոց և յանդիմանութեան ամպարշտաց։ Ա

Վասն չարչարանացն Քրիստոսի, և առ ի Հօրէ ծննդեանն, և վասն հեթանոսաց հաւատալոյն։ Բ

Թէ փախեաւ նա յԱբիսողոմայ որդւոյ իւրոյ։ Գ

Գոհանայ զԱստուծոյ, զի ազատեաց զնա ի ձեռաց Աբիսողոմայ։ Դ

Աղօթք ի խորոց սրտէ խօսք ընդ Աստուծոյ։ Ե

Վասն զի հիւանդութիւն ծիւրական սխտի՝ ի հրամանէն Աստուծոյ ի վերայ նորա հասեալ, մերձեցաւ մինչեւ ի դրունս մահու։ Զ

Վասն բանիցն Քուսեայ, և խեղդմանն Աքիտոփելայ։ Է

Վասն երախտեացն Աստուծոյ առ մարդկային բնութիւնս, և վասն կործանմանն Սատանայի։ Ը

Մարգարէանայ վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ մահուամբն իւրով յաղթահարեաց զՍատանայ որպէս զայր քաջ. խորտակեաց զբռնութիւն մեղաց, և եղոյծ զիշխանութիւն մահու։ Թ

Ասէ և վասն փախստեան իւրոյ ի Սաւուղայ։ Ժ

Յուցանէ զխորամանկութիւն, որք կրկնակի ունին զմիտս, և զընտանութենէ և սիրոյ բանս խօսին, և թշնամւոյ և պատերազմողի գործ գործեն. զոր Սաւուղ առնէր՝ առ ի որսալ զԴաւիթ։ ԺԱ

Միւսանգամ փախուստ ի Սաւուղայ, յառաջ քան զմեղանչելն իւր։ ԺԲ

Վասն Սենեքերիմայ և Ռափսակայ, և վասն հրեշտակին որ կոտորեաց։ ԺԳ

Աստ զփառս և զգոհութիւնս Աստուծոյ գրէ. եւ երանէ զայնոսիկ որ բնակեալ են զլեռամբն, և զտաճարաւն աստուածայնով։ ԺԴ

Մարգարէանայ զմարդկեղէն չարչարանսն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ զյարութիւն մեռելոց, եւ զփրկութիւն այնոցիկ որ հաւատալոց էին ի նա։ ԺԵ

Աղօթէ մարգարէն առ Աստուած, եւ աղաչէ փրկել ի ձեռաց Սաւուղայ։ ԺԶ

Օրհնութիւն Աստուծոյ, որ փրկեցաւ ի ձեռաց Սաւուղայ, եւ ի ձեռաց ամենայն թշնամեաց իւրոց. եւ կոչումն հեթանոսաց եւ օտարանալն Հրէից։ ԺԷ

Վասն արարածոցս լինելութեան. եւ վասն երից օրինացն, բնականին, եւ օրինականին, եւ կատարելոյն, որ է Քրիստոսին. եւ ի խորհուրդ առաքելոցն Քրիստոսի։ ԺԸ

Առաքեաց Սենեքերիմ թուղթ հայհոյութեան առ Եզեկիա ի ձեռն Ռափսակայ զօրագլխին իւրոյ։ Իսկ Եզեկիա տարեալ զթուղթ նորա ի տաճարն տարածանէր, որպէս զի փոխանակ հայհոյութեանն Սենեքերիմայ, ընկալցի յԱստուծոյ զհատուցումն որ եղեւ իսկ։ ԺԹ

Վասն կոտորածին Ասորւոց, եւ հիւանդանալոյն Եզեկեայ եւ յառնելոյն եւ հնգետասան ամ ի կենացն խոստանալոյն։ Ի

Վասն չարչարանացն Քրիստոսի եւ յարութեանն, եւ վասն կոչման հեթանոսաց, եւ փրկութեան ամենայն աշխարհի, եւ վասն առաքելոցն Քրիստոսի, եւ վասն Հրէիցն յանդգնութեան։ ԻԱ

Մարգարէանայ վասն ճշմարիտ հովուին Քրիստոսի, որ եդ զանձն իւր ի վերայ հօտին։ ԻԲ

Վասն յարութեան Քրիստոսի, եւ յերկինս վերանալոյն եւ ամպաչու ճանապարհին։ ԻԳ

Աղօթէ մարգարէն վասն իւր, զի պատերազմունք յոյժ խաղային ի վերայ նորա, վասն այնորիկ զնոր եւ զհին մեղսն յիշէ, եւ աղաչէ զԱստուած, թողութիւն գտանել։ ԻԴ

Պաղատանք առ Աստուած չկորնչել ընդ ամպարիշտս եւ ընդ մեղաւորս. այլ եւ ի խորհուրդ Եկեղեցւոյ։ ԻԵ

Փախուստն ի Սաւուղայ յառաջ քան զերկրորդ օծումն նորա ի Քեբրոն՝ թագաւոր։ ԻԶ

Գործեալ վասն հալածմանն իւրոյ ի Սաւուղայ։ ԻԷ

Վասն խորանին եւ պատարագացն, եւ քահանայիցն. յարի այս և՛ւ յԵզեկիա և՛ւ ի Քրիստոս, վասն զի նա կոտորեաց զԱսորիս, և Քրիստոս զդեւս՝ ի մկրտութեան իւրում։ ԻԸ

Հպարտանալն Ադամայ, նոյնպէս եւ Եզեկեայ, և խրատելն նոցա յԱստուծոյ և փրկելն։ ԻԹ

Վասն հալածման յԱբիսողոմայ զհետ մեղացն գործելոյ. քանզի ցուցանէ ի բանս իւրում Դաւիթ՝ յասելն այսպէս, Ի քեզ, Տէր, յուսացայ։ Լ

Վասն զի մեղաւ եւ ապաշխարեաց եւ եհաս թողութեան. եւ երանի տայ այնոցիկ որք ապաշխարութեամբ գտցեն զթողութիւն մեղաց։ ԼԱ

Եզեկեայ փրկելն յԱսորւոց, առ որ յորդորեաց ժողովուրդն մատուցանել զոհս Տեառն, եւ ցնծալ եւ ուրախ լինել ի Տէր, այլ եւ վասն արարածոցս լինելութեան։ ԼԲ

Փախեաւ մարգարէն ի Սաւուղայ, եւ գնաց առ Աքիմելէք, և անտի առ Անքուս. յիշէ և զԴովէկ Ասորի. քանզի նա եղեւ մատնիչ քահանայապետին՝ զոր կոտորեաց Սաւուղ։ Յիշէ սոսա և զԶիփացիսն, և զայնոսիկ որ լինէին Դաւթի առ Սաւուղ մատնիչ։ ԼԳ

Մարգարէութիւն վասն չարչարանացն Տեառն. եւ վասն միւսանգամ փախստեան իւրոյ ի Սաւուղայ։ ԼԴ

Առնուլ զկուժն ի Սաւուղայ եւ զնիզակն, եւ երդնուլն Սաւուղայ եւ ասելն։ ԼԵ

Խրատէ նախանձաւոր լինել բարեաց, եւ մխիթարէ զայնոսիկ որ ի վիշտս իցեն. եւ ոչ երանէ զամպարիշտս ի դիւրութիւն։ ԼԶ

Պատմէ զպէսպէս վիշտս Սաւուղայ, եւ զԱբիսողոմայ զբռնաւորութիւն, եւ զչար խորհրդաւորութիւն Աքիտոփելայ։ ԼԷ

Փախուցեալ երթայր մարգարէն յԱբիսողոմայ, և պատահեալ նմա Սեմէի, դէմ յանդիման թշնամանէր զնա։ Իսկ նա եդեալ պահապան բերանոյ իւրոյ՝ կայր ի լռութեան, և ընդ միտս իւր աստուածախօսէր։ ԼԸ

Զերծեալ մարգարէն ի հիւանդութենէ իւրմէ՝ գոհանայ զԱստուծոյ. այլ եւ մարգարէութիւն վասն Դանիելի եւ Երեմեայ. եւ վասն մարդկային բնութեանս ազատութեան ի մեղաց եւ ի մահուանէ։ ԼԹ

Վասն չարչարանացն Քրիստոսի. եւ կամաւոր աղքատութեան, եւ վասն Յուդայի մատնչի։ Խ

# ԳԻՐՔ ՍԱՂՄՈՍԱՑ

## ՍԱՂՄՈՍ Ա

1 ԵՐԱՆԵԱԼ է այր որ ոչ գնայ ի
խորհուրդս ամպարշտաց, ի ճանա-
պարհի մեղաւորաց նա ոչ եկայ, եւ յա-
2 թոռս ժանտից ոչ նստաւ. Այլ յօ-
րէնս Տեառն են կամք նորա, եւ յօրէնս
նորա խորհեսցի նա ի տուէ եւ ի գիշե-
3 րի։ Եւ եղիցի նա որպէս ծառ որ տնկեալ
է ի գնացս ջուրց, որ զպտուղ իւր ի
ժամու տացէ, եւ տերեւ նորա մի թա-
փեսցի. եւ զամենայն զոր ինչ արասցէ՝
4 յաջողեսցի նմա։ Ոչ այսպէս են ամպա-
րիշտք, [1]եւ ոչ այնպէս" այլ որպէս զփո-
շի զոր հոսէ հողմ [1]ի վերայ երեսաց երկ-
5 րի"։ Վասն այսորիկ ոչ յարիցեն ամպա-
րիշտք ի դատաստան, եւ ոչ մեղաւորք
6 ի խորհուրդս արդարոց։ Քանզի ճանա-
չէ Տէր զճանապարհս արդարոց, ճանա-
պարհք ամպարշտաց կորիցեն։

## ՍԱՂՄՈՍ Բ

[1]Անվերնագիր ի Հեբրայեցւոցն գրոց եր-
կոքեան սոքա ընդ մի համար են։"

1 Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք, եւ ժո-
2 ղովուրդք խորհեցան ի նանրս։ Յան-
դիման եղեն թագաւորք երկրի, եւ իշ-
խանք ժողովեցան ի միասին [2]վասն Տեառն
3 եւ [2]վասն Օծելոյ նորա։ Խզեսցուք զկա-
պանս նոցա, եւ ընկեսցուք ի մէնջ զլուծ
նոցա։
4 Բնակեալն յերկինս ծիծաղեսցի զնո-
քօք, եւ Տէր արհամարհեսցէ զնոսա։
5 Յայնժամ խօսեսցի ընդ նոսա բարկու-
թեամբ իւրով, եւ սրտմտութեամբ իւ-
6 րով խռովեսցուսցէ զնոսա։ [3]Ես կացի
թագաւոր ի նմանէ, ի վերայ Սիոնի լե-

[1]Յեբր. դարման   [2]Յեբր. ընդդէմ   [3]Յեբր. Եւ ես կացուցի զթագաւոր իմ ի վերայ Սիոնի՝ լերին սրբութեան իմոյ։
(7) Պատմեցից զհրամանն. Տէր

րին սրբոյ նորա՝ ի պատմել զհրա-
մանս Տեառն։
7 Տէր" ասաց ցիս, Որդի իմ ես դու, եւ
8 ես այսօր ծնայ զքեզ. Խնդրեա յինէն եւ
տաց քեզ զհեթանոսս ի ժառանգութիւն,
եւ [4]իշխանութիւն քեզ զամենայն ծագս
9 երկրի։ Հովուեսցես" զնոսա գաւազա-
նաւ երկաթեաւ. որպէս զանօթ բրուտի
փշրեսցես զնոսա։
10 Արդ, թագաւորք, զայս ի միտ առէք,
խրատեցարուք ամենեքեան որք դատիք
11 զերկիր։ Ծառայեցէք Տեառն երկիւղիւ,
եւ ցնծացէք առաջի նորա դողութեամբ։
12 [5]Ընկալարուք զխրատ նորա զի մի բար-
կասցի Տէր, եւ կորնչիցիք ի ճանապար-
13 հացն արդարութեան, ի ժամանակի յոր-
ժամ" բորբոքեսցի բարկութիւն նորա։
Երանի ամենեցուն՝ որք յուսացեալ են
ի Տէր։

## ՍԱՂՄՈՍ Գ

1 Սաղմոս Դաւթի. ի ժամանակի զի փա-
խուցեալ էր նա յերեսաց Աբիսողոմայ
որդւոյ իւրոյ։

2 Տէր, զի՞ բազում եղեն նեղիչք իմ. բա-
3 զումք յարեան ի վերայ իմ։ Բազումք ա-
սէին զանձնէ իմմէ, թէ Ջիք փրկու-
թիւն սորա առ Աստուած իւր։[6]
4 Այլ դու, Տէր, [7]օգնական իմ ես, փառք
5 իմ եւ բարձրացուցիչ գլխոյ իմոյ։ Ձայ-
նիւ իմով ես առ Տէր կարդացի, եւ լուաւ
6 ինձ ի լեռնէ սրբոյ իւրմէ։[6] Ես ննջեցի
եւ ի քուն եղէ, զարթեայ [8]եւ Տէր ըն-
7 դունելի իմ է"։ Ոչ երկեայց ես ի բիւ-
րուց զօրաց նոցա, որք շուրջանակի պա-

[4]Եբր. ստացուած քեզ զծագս երկրի։ (9) Խորտակեսցես   [5]Եբր. Համբուրեցէք զՈրդին, զի մի բարկասցի. եւ կորնչիցիք ի ճանապարհի, յորժամ սակաւ ինչ   [6]Եբրայեցին յաւելու, Սելայ, այսինքն Հանգիստ եւ Բութ նշանակել զփոփոխումն յերգելն։   [7]Եբր. ասպար   [8]Եբր. զի Տէր պաշտպանեաց զիս

8 տեալ պաշարեալ պահէին զիս։ Արի,
Տէր, եւ փրկեա զիս, Աստուած իմ. զի
դու հարեր զամենեսեան որք էին ընդ
իս թշնամութեամբ ի տարապարտուց,
եւ զատամունս մեղաւորաց փշրեցեր։
9 Տեառն է փրկութիւն. ի վերայ ժողո-
վրդեան քո օրհնութիւն քո։[1]

## ՍԱՂՄՈՍ Դ

1 [2]Ի կատարած ընդ օրհնութեանս". Սաղ-
մոս Դաւթի։

2 Ի կարդալ իմում [3]լուար ինձ, Աստուած,
ըստ արդարութեան". ի նեղութեան ինձ
անդորր արարեր. ողորմեա ինձ եւ լուր
աղօթից իմոց։
3 Որդիք մարդկան, մինչեւ յե՞րբ [4]էք
խստասիրտք", ընդէ՞ր սիրէք զնանրու-
4 թիւն, եւ խնդրէք զստութիւն։[1] Ծա-
նիրուք զի սքանչելիս արար Տէր սրբոյ
իւրում. եւ Տէր լուիցէ ինձ ի կարդալ
5 իմում առ նա։ Բարկանայք՝ եւ մի՛ մե-
ղանչէք. զոր ինչ ասէք ի սիրտս ձեր
6 յանկողինս ձեր՝ զղջացարուք։[1] Մատու-
ցէք պատարագս արդարութեան, եւ յու-
7 սացարուք ի Տէր։ Բազումք ասէին թէ
Ո՛ ցուցցէ մեզ զբարութիւն. [5]Նշանե-
8 ցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, Եւ ե-
տուր ուրախութիւն սրտից մերոց. ի
պտղոյ ցորենոյ, գինւոյ եւ ձիթոյ իւրեանց
9 լցուցեր զնոսա։ Խաղաղութեամբ յայս
եւ ի սոյն ննջեսցուք եւ զարթիցուք.
10 Զի դու, Տէր, միայն առանձին յուսով
քով բնակեցուցեր զմեզ։"

## ՍԱՂՄՈՍ Ե

1 [6]Ի կատարած վասն վիճակելոյն". Սաղ-
մոս Դաւթի։

2 Բանից իմոց ունկն դիր, Տէր, եւ ի միտ
3 առ զաղաղակ իմ։ Նայեաց ի ձայն ա-
ղօթից իմոց, Թագաւոր իմ եւ Աստուած
4 իմ։ Ես զքեզ աղաչեմ, Տէր, ընդ ա-
առաւօտս լուիցես ձայնի իմում, ընդ ա-
առաւօտս պատրաստ եղէց յանդիման լի-
5 նել առ քեզ։ Ոչ թէ դու Աստուած կա-
միս զանօրէնութիւն, եւ ոչ բնակեն առ
6 քեզ չարք։ Մի՛ անօրէնք բնակեսցեն ա-
ռաջի աչաց քոց. ատեցեր զայնոսիկ որք
7 գործեն զանօրէնութիւն. Կորուսանես
զամենեսեան որք խօսին սուտ, զայր
արիւնահեղ եւ զնենգաւոր պղծէ առ-
8 նես դու, Տէր։ Այլ ես ըստ բազում ո-
ղորմութեան քում մտից ի տուն քո,
եւ երկիր պագից ի տաճար սուրբ քո
երկիւղիւ քո։
9 Տէր, առաջնորդեա ինձ յարդարու-
թեան քում, վասն թշնամեաց իմոց. ու-
ղիղ արա առաջի իմ զճանապարհս քո։
10 Զի ոչ գոյ ի բերանս նոցա ճշմարտու-
թիւն, եւ սիրտք նոցա նանրեալք են.
որպէս գերեզման բաց է կոկորդ նոցա,
լեզուօք իւրեանց նենգաւորք եղեն։
11 Դատեա զնոսա, Աստուած, զի անկցին
ի խորհրդոց իւրեանց. ըստ բազում ամ-
պարշտութեան նոցա մերժեա զնոսա, զի
դառնացուցին զքեզ։
12 Ուրախ լիցին ամենեքեան որք յու-
սացեալ են ի քեզ, յաւիտեան ցնծաս-
ցեն, [7]եւ բնակեսցես դու ի նոսա. պար-
ծեսցին ի քեզ սիրելիք անուան քո։"
13 Զի օրհնեսցես դու զարդարն. Տէր, որ-
պէս զինու հաճութեամբ քով պսակե-
ցեր զնոսա։

## ՍԱՂՄՈՍ Զ

1 [8]Ի կատարած ընդ օրհնութեանս վասն"
Ութերորդայն. Սաղմոս Դաւթի։

2 Տէր, մի՛ սրտմտութեամբ քով յանդի-
մաներ զիս, եւ մի՛ բարկութեամբ քով
3 խրատեր զիս։ Ողորմեա ինձ, Տէր, զի
հիւանդ եմ ես. բժշկեա զանձն իմ, զի
4 խռովեցան ոսկերք իմ։ Անձն իմ յոյժ
խռովեցաւ, եւ դու, Տէր, մինչեւ յե՞րբ։
5 Դարձ, Տէր, եւ փրկեա զանձն իմ, կե-
ցո զիս, Տէր, ըստ ողորմութեան քում։
6 Զի ոչ ոք է որ ի մահու յիշէ զքեզ, կամ
ի դժոխս խոստովան առնի առ քեզ։
7 Վաստակեցի ես ի հեծութեան իմում,
լուացի զամենայն գիշեր զմահիճս իմ,
եւ արտասուօք իմովք զանկողինս իմ

[1] Եբրայեցին յաւելու, Հանգիստ։ [2] Եբր. Առ գլուխ երաժշտացն Նկինոթաւ. (ազգ ինչ նուագարանի). [3] Եբր. լուր ինձ, Աստուած արդարութեան իմոյ [4] Եբր. փառք իմ լլկին ի նախատինս [5] Եբր. Ծագեա ի վերայ մեր զլոյս երեսաց քոց, Տէր։ (8) Ետուր ուրախութիւն սրտի իմում. քան զժամանակ յաճախելոյ ցորենոյ նոցա եւ գինւոյ նոցա։ (9) Խաղաղութեամբ հանգեայց եւ ննջեցից, զի դու, Տէր, միայն յապահովս բնակեցուցես զիս։ [6] Եբր. Առ գլուխ երաժշտաց Նհիլոթաւ. (ազգ ինչ [illegible])։

[7] Եբր. զի դու հովանի լինիս ի վերայ նոցա. եւ ցնծասցեն ի քեզ որք սիրեն զանուն քո։ [8] Եբր. Առ գլուխ երաժշտացն Նկինոթաւ ի վերայ

8 թացի։ Խռովեցաւ ի սրտմտութենէ ակն
իմ, մաշեցայ ես ի վերայ ամենայն թշնա-
մեաց իմոց։
9 Ի բաց կացէք յինէն ամենեքեան որք
գործէք զանօրէնութիւն. լուաւ Տէր
10 ձայնի լալոյ իմոյ. Լուաւ Տէր աղօթից
իմոց, եւ Տէր զխնդրուածս իմ ընկա-
11 լաւ։ Ամաչեսցեն եւ խռովեսցին յոյժ ա-
մենայն թշնամիք իմ, դարձցին յետս եւ
ամաչեսցեն յոյժ վաղվաղակի եւ խռո-
վեսցին։

## ՍԱՂՄՈՍ Է

1 [1]Սաղմոս Դաւթի, զոր ասաց Տեառն
վասն բանին Քուսեայ որդւոյ Յեմինեայ։

2 Տէր Աստուած իմ, ի քեզ յուսացայ,
փրկեա զիս յամենայն հալածչաց իմոց
3 եւ ապրեցո զիս. Գուցէ երբեք յափշտա-
կիցէ որպէս առեւծ զանձն իմ, [2]ոչ ոք
իցէ որ փրկիցէ, եւ ոչ այն" որ ապրե-
4 ցուցանիցէ։ Տէր Աստուած իմ, թէ ա-
րարի զայս, թէ իցեն անօրէնութիւնք
5 ի ձեռս իմ, Թէ հատուցի երբեք [3]այնո-
ցիկ որք հատուցին ինձ չար, անկայց եւ
6 ես ի թշնամեաց իմոց ընդունայն," Հա-
լածեսցէ ապա թշնամին զանձն իմ,
հասցէ եւ կոխեսցէ յերկիր զկեանս իմ,
7 եւ զփառս իմ ի հող բնակեցուսցէ։[4] Ա-
րի, Տէր, բարկութեամբ քով, եւ բարձր
լեր [5]ի սպառել թշնամեաց իմոց. զար-
թիր, [6]Տէր Աստուած իմ", ի հրամանս
8 քո զոր պատուիրեցեր։ Եւ ժողովք ժո-
ղովրդոց շուրջ եղիցին զքեւ. վասն այ-
9 սորիկ ի բարձունս դարձ, [7]Տէր. Եւ Տէր
դատի զժողովուրդս իւր". դատ արա ինձ,
Տէր, ըստ արդարութեան իմում, ըստ
10 անմեղութեան իմում որ յիս։ [8]Կատա-
րեսցին չարիք ի վերայ մեղաւորաց", եւ
յաջողեսցես դու արդարոյն. որ քննէ
զսիրտս եւ զերիկամունս, Աստուած
11 արդար։ Յիրաւի է օգնութիւն ինձ յԱս-
տուծոյ, որ ապրեցուցանէ զայնոսիկ՝ որ
12 ուղիղ են սրտիւք։ Աստուած դատա-
ւոր արդար [9]հզօր եւ երկայնամիտ, որ
ոչ ածէ զբարկութիւն իւր" զօրհանա-
13 պազ. Ապա թէ ոչ դառնայ առ նա,
զսուր իւր սրեալ է եւ զաղեղն իւր [10]լա-
14 րեալ. Եւ ի նմա" է պատրաստեալ զա-
նօթս մահու, եւ զնետս իւր այրեցե-
լովք է գործեալ։
15 Ահաւասիկ երկնեաց զանօրէնութիւն,
յղացաւ զցաւս եւ ծնաւ զանիրաւու-
16 թիւն։ Գուբն զոր փորեաց եւ պեղեաց,
ի նոյն անկցի ի խորխորատ զոր եւ գոր-
17 ծեաց։ Դարձցին ցաւք ի գլուխ նորա,
եւ ի վերայ գագաթան նորա անօրէնու-
18 թիւնք իւր իջցեն։ Խոստովան եղէց
Տեառն ըստ արդարութեան նորա, եւ
սաղմոս ասացից անուան Տեառն բարձ-
րելոյ։

## ՍԱՂՄՈՍ Ը

1 [11]Ի կատարած ի վերայ հնձանացն". Սաղ-
մոս Դաւթի։

2 Տէր, Տէր մեր, զի՛ սքանչելի է անուն
քո յամենայն երկրի, համբարձաւ մեծ-
3 վայելչութիւն քո ի վերայ քան զերկինս։ Ի
բերանոյ մանկանց տղայոց եւ ստնդիեայց
հաստատեցեր զօրհնութիւն. վասն թշնա-
մեաց քոց, [12]Տէր, զի եղծցի թշնամին եւ
հակառակորդն։
4 Տեսից" զերկինս, զգործս մատանց
քոց, զլուսին եւ զաստեղս զորս դու
5 հաստատեցեր. Ո՞վ է մարդ՝ զի յիշես
դու զնա, կամ որդի մարդոյ, թէ այց
6 ինչ արասցես դու նմա։ Փոքր ինչ խո-
նարհ արարեր զնա քան զհրեշտակս քո,
փառօք եւ պատուով պսակեցեր զնա.
7 Եւ կացուցեր զնա ի վերայ ամենայն ձե-
ռակերտաց քոց. զամենայն ինչ հնա-
զանդ արարեր ի ներքոյ ոտից նորա,
8 Զխաշն եւ զարջառ եւ զամենայն ինչ,
9 եւս եւ զերէ վայրի, Զթռչունս երկ-
նից, զձկունս ծովու՝ որ շրջին ընդ շա-
10 ւիղս ծովու։ Տէր, Տէր մեր, զի՛ սքան-
չելի է անուն քո յամենայն երկրի։

## ՍԱՂՄՈՍ Թ

1 [13]Ի կատարած, վասն գաղտնեացն որդ-
ւոյ". Սաղմոս Դաւթի։

2 Գոհացայց զքէն, Տէր, բոլորով սրտիւ

[1] Եբր. Շիկկայօն [illegible] [2] Եբր. պատառեսցէ, և ոչ իցէ [3] Եբր. չար բարեկամի իմում, և զրկեցի զոր նեղէրն զիս ի նանիր։ [4] Եբր. սէլա. Հանգիստ։ [5] Եբր. ընդդէմ կատաղութեան [6] Եբր. վասն իմ [7] Եբր. (9) Տէր դատի զժողովուրդս [8] Եբր. Սպառեսցի չարութիւն ամպարշտաց [9] Եբր. է, և Աստուած բարկացեալ է [illegible]

[10] Եբր. լարեալ և պատրաստեալ է (14) Եւ վասն նորա [11] Եբր. Առ գլուխ երաժշտացն ի վերայ Գիթթիթի ([illegible]) [12] Եբր. զի լռեցուցես զթշնամին եւ զհակառակորդն։ (4) Յորժամ տեսից [13] Եբր. Առ գլուխ երաժշտացն ի վերայ Մութլաբբէնի ([illegible])

խմով, պատմեցից զամենայն սքանչելիս
3 քո։ Ուրախ եղէց եւ ցնծացայց ի քեզ,
սաղմոս ասացից անուան քում, Բարձ-
րեալ։
4 Ի դառնալ յետս թշնամեաց իմոց,
տկարասցին եւ կորիցեն յերեսաց քոց։
5 Արարեր զդատաստանս իմ եւ զիրա-
ւունս, նստար յաթոռ դատաւոր արդա-
6 րութեան։ Սաստեցեր ի հեթանոսս, եւ
կորեաւ ամպարիշտն. զանուանս նոցա
7 ջնջեցեր յաւիտեանս յաւիտենից։ Եւ
թշնամւոյն [1]զէն պակասեաց" մինչ ի
սպառ. զքաղաքս աւերեցեր, եւ կորեաւ
8 [2]յիշատակ նոցա աղաղակաւ։ Աստուած"
կայ եւ մնայ յաւիտեան, պատրաստ ա-
9 րար զաթոռ իւր ի դատաստանի։ Ինքն
դատի զաշխարհս արդարութեամբ, եւ
10 զժողովուրդս [3]իւր ուղղութեամբ։ Եղեւ
Տէր ապաւէն տնանկի, օգնական ի նե-
11 ղութեան՝ ի դէպ ժամանակի։ Յուսաս-
ցին ի քեզ ամենեքեան որք գիտեն զա-
նուն քո. զի ոչ թողցես զայնոսիկ որ
խնդրեն զքեզ, Տէր։
12 Սաղմոս ասացէք Տեառն որ բնակեալն
է ի Սիոն. պատմեցէք ի հեթանոսս զգործս
13 նորա։ Ի խնդրել զարիւն նոցա՝ յիշեաց
եւ ոչ մոռացաւ Տէր զաղօթս տնանկաց։
14 Ողորմեաց ինձ, Տէր, եւ տես զխո-
նարհութիւն իմ ի թշնամեաց իմոց. ո
բարձր արարեր զիս ի դրանց մա-
15 հու. Որպէս պատմեցից զամենայն
օրհնութիւնս քո ի դրունս դստեր Սիո-
նի, ցնծացայց ի փրկութեան քում։
16 Ընկլան հեթանոսք [4]յապականութեան
իւրեանց" զոր արարին. որոգայթ զոր թա-
17 քուցին՝ ասցէ զոտս նոցա։ Ճանաչի Տէր
յառնել զդատաստանս իւր, եւ ի գործս
ձեռաց իւրեանց կալեսցին մեղաւորք։[5]
18 Դարձցին մեղաւորք անդրէն ի դժոխս,
եւ ամենայն հեթանոսք որ մոռացան
19 զԱստուած։ Ոչ ի սպառ մոռանայ Տէր
զաղքատն, համբերութիւն տնանկաց
20 մի կորիցէ ի սպառ։ Արի, Տէր, եւ մի
զօրասցի մարդ. դատեսցին հեթանոսք
21 առաջի քո։ Կացո, Տէր, [6]օրէնսդիր ի
վերայ նոցա, եւ ծանիցեն հեթանոսք՝
թէ մարդիկ են։[7]

[1]Եբր. աւերք սպառեցան [2]Եբր. յիշատակ իւրեանց նոցա։ (8) Բայց Տէր [3]Եբր. ուղղաւ [4]Եբր. ի խորխորատի [5]Եբրայեցին յաւելու, Հիկկայոն սելահ խոկումն։ Հանգիստ։ [6]Կամ. երկեւղ [7]Եբրայեցին յաւելու, Հանգիստ։

(Ժ)

1 [8]Ընդէ՞ր, Տէր, կացեր ի հեռաստանէ,
անտես արարեր ի դէպ նեղութեան ժա-
2 մանակի։ Յամբարտաւանել ամպարշտի՝
այրի աղքատն. արգելցին ի խորհուրդս
3 իւրեանց զոր եւ խորհեցան։ Զի գովի
մեղաւոր ի ցանկութիւն անձին իւրոյ.
4 [9]որ զրկէն, եւ նա գովի։ Իսկ ընդէ՞ր
բարկացոյց մեղաւորն զԱստուած, ըստ
բազում բարկութեան իւրում թէ ոչ
խնդրի". ոչ է Աստուած առաջի աչաց
5 նորա։ [10]Պիղծ են ճանապարհք նորա յա-
մենայն ժամ, բարձեալ են իրաւունք
յերեսաց նորա, ի վերայ ամենայն թշնա-
6 մեաց իւրոց [11]տիրեսցէ։ Ասաց ի սրտի
իւրում. Թէ Ոչ սասանեցայց, ազգէ յազգ
7 [12]առանց չարի"։ Անիծիւք եւ դառնու-
թեամբ եւ նենգութեամբ լի է բերան
նորա. ի ներքոյ լեզուի նորա ցաւք եւ
8 վաստակք։ Նստի [13]դարանեալ ընդ մե-
ծամեծս", ի գաղտնիս սպանանել զան-
9 պարտն, աչք նորա ի տնանկս հային։ Դա-
րանի ի գաղտնիս՝ որպէս առիւծ ի մոր-
ւոջ իւրում. դարանի յափշտակել զաղ-
քատն, յափշտակել զաղքատն եւ ձգել զնա
10 յորոգայթ իւր։ [14]Խոնարհեցուսցէ զնա,
խոնարհեսցի եւ անկցի ի տիրել իւրում
11 ի վերայ տնանկաց"։ Զի ասաց ի սրտի
իւրում թէ Մոռացաւ Աստուած, դարձոյց
զերեսս իւր զի մի՛ տեսցէ ի սպառ։
12 Արի, Տէր Աստուած իմ, բարձր ե-
ղիցի ձեռն քո, եւ մի՛ մոռանար զտնանկս։
13 Իսկ ընդէ՞ր բարկացոյց ամպարիշտն զԱս-
տուած, զի ասաց ի սրտի իւրում թէ
14 ոչ [15]քննի։ Տեսանես դու զնա, ի ցաւս,
եւ ի սրտմտութիւնս հայիս մատնել զնա
ի ձեռս քո. ի քեզ թողեալ է աղքատն
15 եւ որբոյն դու ես օգնական։ Խորտա-

[8]Աստ սկսանի Ժ. Սաղմոս յԵբրայական բնագրին, մինչ ի վերջ բովանդակութեան, որպէս և յԵօթանասնիցն, նա ևս Եբրայ ընդ Թ. Սաղմոսին, և այսպէս Ժ. Սաղմոսն մեր համեմատի ԺԱ. Սաղմոսին ըստ Եբրայեցւոցն։ Զայս օրինակ Եբրայ յառաջ կայ Սաղմոսացն է մեզ մինչև ի ՃԽԶ Սաղմոսն, որ բաժանելով յերկուս՝ ընդ գծէ համարոյ Եբրայեցւոցն։ [9]Եբր. և ազատ երանի տայ անձին իւրում, անարգէ զՏէր։ (4) Ամպարիշտն ըստ ամբարտաւանութեան ցասման իւրոյ ոչ խնդրէ զնա [10]Եբր. Դժուարին [11]Եբր. շշնչեսցէ [12]Եբր. ոչ եղէց ի չարիս [13]Եբր. ի դարանս գեղից [14]Եբր. Կծկի, խոնարհի, և տնանկք անկանին ի ճիրանունս նորա։ [15]Եբր. քննեսցես

կեացի բազում մեղաւորի եւ չարի,
խնդրեսցին մեղք նորա եւ նա մի՛ գտցի։
16 Տէր թագաւոր յաւիտեանս յաւիտե-
նից, կորիցեն հեթանոսք յերկրէ նորա։
17 Զցանկութիւն անանկաց լուար, Տէր.
[1]ի պատրաստութիւն սրտից նոցա հայե-
18 ցաւ ունկն քո", Դատ առնել որբոյն եւ
տնանկի, զի մի՛ եւս յաւելուցու [2]մարդ
ի մեծարանել իւրում ի վերայ երեսաց
երկրի"։

## ՍԱՂՄՈՍ Ժ (ԺԱ)

1 [3]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

2 Ի Տէր յուսացայ. ո՞րպէս ասիցէք ցանձն
իմ, Փոփոխեաց ի լերինս որպէս ճնճղուկ։
3 Զի ահա մեղաւորք լարեցին զաղեղունս
իւրեանց, պատրաստ արարին զնետս [4]ի
կապարճս, ձգել ընդ խաւար աջողցին
4 այք ուղիղ են սրտիւք։ Զի [5]զոր դուն
չինեցեր՝ նոքա աւերեցին". Իսկ արդարն
5 զի՞ արար։ Տէր ի տաճար սուրբ իւրում,
Տէր յերկինս յաթոռ իւրում. աչք նորա
ի տնանկս հային, արտեւանունք նորա
6 քննեն զորդիս մարդկան։ Տէր քննէ
զարդարն. եւ զամպարիշտն, [6]որ սիրէ
7 զմեղս ատեայ զանձն իւր"։ Տեղասցէ
ի վերայ մեղաւորաց որոգայթ, հուր եւ
ծծումբ. այամբրրիկ բաժին բաժակի նո-
8 ցա։ Արդար է Տէր, զարդարութիւն սի-
րէ, զուղղութիւն տեսանեն երեսք նորա։

## ՍԱՂՄՈՍ ԺԱ (ԺԲ)

1 [3]Ի կատարած. ի վերայ Ութերորդացն.
Սաղմոս Դաւթի։

2 Ապրեցո զիս, Տէր, զի նուազեաց սուրբ.
նուազեցան ճշմարտութիւնք յորդւոց ի
3 մարդկանէ։ Ի նանիր խօսեցաւ այր ընդ
ընկերի իւրում, շրթամբք նենգաւորօք
4 սրտէ ի սիրտ խօսեցաւ։ Սատակէ Տէր
զամենայն շրթունս նենգաւորս եւ զլե-
5 զուս մեծաբանս, Այք ասացին, Զլեզուս
մեր մեծ արասցուք, շրթունք մեր առ
6 մեզ են, եւ արդ մեր ո՞վ է տէր։ Վասն
տառապանաց աղքատին եւ հեծութեան
տնանկին՝ Այժմ յարեայց ասէ Տէր, եդից

[7]զփրկութիւն իմ եւ համարձակեցայց ի
7 նոսա"։ Բանք Տեառն են բանք սուրբ,
որպէս զարծաթ ընտրեալ եւ փորձեալ
յերկրէ, ըրեալ եւ պարզեալ եւթնպա-
8 տիկ ի հողոյ։ Դու, Տէր, պահեսցես [8]զմեզ,
եւ ապրեցուսցես յազգէ յայսմանէ մինչեւ
9 յաւիտեան։ Շուրջանակի ամպարիշտք
շրջին, ըստ [9]բարձրութեան քում մեծ
արասցես դու զորդիս մարդկան"։

## ՍԱՂՄՈՍ ԺԲ (ԺԳ)

[3]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

1 Մինչեւ յե՞րբ, Տէր, մոռանաս զիս ի
սպառ, մինչեւ յե՞րբ դարձուցանես զե-
2 րեսս քո յինէն։ Մինչեւ յե՞րբ դնեմ զխոր-
հուրդս յանձն իմ, եւ ցաւք սրտի իմոյ
3 զաւուրս։ Մինչեւ ցե՞րբ բարձրանայ
4 թշնամին ի վերայ իմ։ Նայեա եւ լուր
ինձ, Տէր Աստուած իմ. լոյս սուր,
Տէր, աչաց իմոց, զի մի՛ երբեք ննջե-
5 ցից ի մահ։ Մի՛ ասասցէ թշնամին իմ
թէ Յաղթեցի նմա, կամ նեղիչք իմ
6 ցնծասցեն թէ ես սասանեցայց։ Ես յո-
ղորմութիւնս քո, Տէր, յուսացայ,
ցնծասցէ սիրտ իմ ի փրկութեան քում.
օրհնեցից զՏէր, զԲարերարդ իմ։

## ՍԱՂՄՈՍ ԺԳ (ԺԴ)

[3]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

1 Ասաց անզգամն ի սրտի իւրում, թէ
Ոչ գոյ Աստուած. ապականեցան եւ
պղծեցան յանօրէնութեան իւրեանց,
2 եւ ոչ ոք է որ առնէ զբարի։ Տէր յերկ-
նից նայեցաւ յամենայն որդիս մարդ-
կան, տեսանել թէ իցէ՞ ոք իմաստուն
3 որ խնդրիցէ զԱստուած։ Ամենեքեան
խոտորեցան, ի միասին անպիտանա-
ցան. ոչ ոք է որ առնէ զբարի, եւ չէ
4 ոք մինչեւ ի մի։ Որպէս ոչ ծանիցեն
ամենեքեան այք գործեն զանօրէնու-
թիւն, այք ուտէին զժողովուրդ իմ որ-
պէս կերակուր հացի, եւ առ Տէր ոչ
5 կարդացին։ Անդ երկիցեն զերկեւղ [10]ուր
ոչ իցէ երկեւղ, զի Տէր" է յազգս ար-
6 դարոց։ Զխորհուրդ աղքատի յամօթ
7 [11]արարին, զի Տէր է յոյս նորա։ Ո՛ տա-
ցէ ի Սիոնէ զփրկութիւն Իսրայելի. ի

---

[1] Եբր. պատրաստ արասցես զսիրտ նոցա, ունկնդիր լիցիս նոցա [2] Եբր. երկեցուցանել մարդ որ յերկրէ [3] Եբր. Առ գլուխ երաժշտացն. [4] Եբր. յաղեղունս [5] Եբր. հիմունք կործանին [6] Եբր. եւ զոր սիրէն զմեղս՝ ատեայ անձն նորա

[7] Եբր. ի փրկութեան զորս ծաղր առնեն [8] Եբր. զնոսա [9] Եբր. բարձրանալ անարգաց յորդիս մարդկան [10] Եբր. զի Աստուած [11] Եբր. արարէք

դարձուցանել Տեառն զգերութիւն ժո-
ղովրդեան իւրոյ, ցնծասցէ Յակոբ եւ
ուրախ եղիցի Իսրայէլ։

## ՍԱՂՄՈՍ ԺԴ (ԺԵ)

[1]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

1 Տէր, ո՞վ կացցէ ի խորանի քում, կամ
ո՞վ բնակեսցէ ի լեառն սուրբ քո։
2 Որ գնայ անբիծ, գործէ զարդարութիւն,
խօսի զճշմարտութիւն ի սրտի իւրում.
3 Որ ոչ նենգաւորեաց լեզուաւ իւրով,
եւ չար ընկերի իւրում ոչ արար, նա-
խատինս [2]ի մերձաւորաց նա ոչ առ-
4 նու։ Արհամարհեալ է առաջի նորա չա-
րագործն, զերկիւղածս Տեառն փառա-
ւոր առնէ, երդնու [3]ընկերի իւրում՝
5 եւ ոչ ստէ։ Զարծաթ իւր ի վաշխու ոչ
տայ, կաշառ ի վերայ [4]իրաւանց ոչ առ-
նու. որ զայս արասցէ, նա մի՛ սասա-
նեսցի յաւիտեան։

## ՍԱՂՄՈՍ ԺԵ (ԺԶ)

1 [5]Արձանագիր Դաւթի։

2 Պահեա զիս, Աստուած, զի ես ի քեզ
յուսացայ. ասացի Տեառն, Տէր իմ ես
3 դու, եւ բարիք իմ ինձ ի քէն են։ [6]Սրբոց
քոց որ են յերկրի քում, սքանչելի ա-
րարեր զամենայն կամս իմ՝ ի նոսա։
4 Յաճախեցին հիւանդութիւնք [7]նոցա,
յետ այսորիկ ապա վաղվաղեցին. ոչ
ժողովեցայց ի ժողովս՝ նոցա յարեանց,
եւ ոչ յիշեցից զանուանս նոցա ի շրթունս
5 իմ։ Տէր բաժին ժառանգութեան իմոյ
եւ բաժակի իմոյ, դու ես, որ այարէն
դարձուցանես զժառանգութիւն իմ յիս։
6 Վիճակք ելին ինձ ընդ ընտիրս, եւ ժա-
7 ռանգութիւն իմ հաճոյ եղեւ ինձ։ Օրհ-
նեցից զՏէր որ իմաստուն արար զիս.
մինչ ի գիշերի եւս խրատեցին զիս երի-
8 կամունք իմ։ Յառաջագոյն տեսանէի
զՏէր առաջի իմ յամենայն ժամ, զի է
ընդ աջմէ իմմէ զի մի՛ սասանեցայց։
9 Վասն այսորիկ ուրախ եղեւ սիրտ իմ,
եւ ցնծացաւ լեզու իմ, եւս եւ մար-
10 մին իմ բնակեսցէ յուսով։ Զի ոչ
թողցես զանձն իմ ի դժոխս, եւ ոչ տա-
ցես սրբոյ քում տեսանել զապականու-
11 թիւն։ Ցուցեր ինձ զճանապարհս [8]քո
կենաց, լցուցեր զիս ուրախութեամբ
երեսաց քոց, ի քաղցրութենէ վայել-
չութեան աջոյ՝ քո մինչեւ ի սպառ։

## ՍԱՂՄՈՍ ԺԶ (ԺԷ)

Աղօթք Դաւթի։

1 Լուր, Տէր, արդարութեան, եւ նայեա
ի խնդրուածս իմ. ունկն դիր աղօթից
իմոց, զի ոչ շրթամբք նենգաւորօք։
2 Յերեսաց քոց իրաւունք ինձ ելցեն, եւ
3 աչք [9]իմ տեսցեն զուղղութիւն։ Փոր-
ձեցեր զսիրտ իմ եւ քննեցեր ի գիշերի,
փորձեցեր զիս եւ ոչ գտաւ յիս [10]անի-
4 րաւութիւն։ Մի՛ խօսեսցի բերան իմ
զգործս որդւոց մարդկան. վասն բանից
շրթանց քոց ես պահեցից զճանապարհս
5 խիստս՝։ Հաստատեա զշաւիղս իմ ի ճա-
նապարհի քում, զի մի՛ գայթագղեսցին
6 գնացք իմ։ Ես առ քեզ, Տէր, կար-
դացի զի լուար ինձ, Աստուած. խո-
նարհեցո առ իս զունկն քո եւ լուր բա-
7 նից իմոց։ Սքանչելի արարեր զողոր-
մութիւնս քո, ո փրկես զայնոսիկ որ յու-
սացեալ են ի քեզ՝ յայնցանէ որ հակա-
8 ռակ կան աջոյ քո։ Պահեա զիս որպէս
բիբ ական, ընդ հովանեաւ թեւոց քոց
9 ծածկեսցես զիս Յերեսաց ամպարշտացն որք
տառապեցուցին զիս. թշնամիք զանձն
10 իմ պաշարեցին. Ի ճարպս իւրեանց ար-
գելան. բերանք նոցա խօսեցան զամբար-
11 տաւանութիւն։ [1]Մերժեցին զիս եւ՝ այժմ
պարձեալ պատեցան զինեւ, ուշ եդին խո-
12 նարհեցուցանել զիս յերկիր։ Համարեցան
ինձ որպէս առեւծ զի պատրաստ է յորս, որ-
պէս կորիւն առիւծու զի նստի դարանեալ։
13 Արի, Տէր, ժամանեա նոցա եւ խափանեա
զնոսա. փրկեա զանձն իմ յամպարշտաց
[11]իսրոյ եւ ի ձեռանէ թշնամւոյն։ Տէր,
կորո զնոսա յերկրէ, բաժանեա եւ խա-
14 փանեա զնոսա ի կեանս իւրեանց։ Գաղտ-

[1] Յեբր. [illegible] [2] Եբր. ի վերայ մերձաւորի իւրոյ [3] Կամ, ի վնաս իւր [4] Եբր. անմեղին [5] Եբր. Երգ [6] Եբր. Ի սուրբս որ են յերկրի, նոքին են պատուականք. ամենայն ուրախութիւն իմ է [7] Եբր. նոցա որ այլուր փաղփաղեն, ոչ նուիրեցից զնուէրս

[8] Եբր. կենաց, լիութիւն ուրախութեան յերեսս քո, վայելչութիւն յաջ [9] Եբր. քո [10] Եբր. անիրաւութիւն. խորհեցայ, մի՛ յանցանիցէ բերան իմ։ (4) Ի գործս մարդկան ըստ բանից շրթանց քոց զգուշացայ ի ճանապարհաց անօրինին [11] Եբր. սրով քով. (14) Ի մարդոց ձեռամբ քով Տէր, ի մարդոց աշխարհի որոց բաժին ի կեանս իւրեանց եւ ի շտեմարանաց քոց լցուցանես զորովայն նոցա. յագեսցին որդւք և թողցեն զմնացուած իւրեանց տղայոց

նեօք քովք լցան որովայնք նոցա, յա-
գեցան կերակրովք եւ թողին զմնա-
15 ցուածս ազգաց իւրեանց։ Ես արդարու-
թեամբ երեւեցայց երեսաց քոց, յա-
գեցայց յերեւել փառաց քոց՚՚

## ՍԱՂՄՈՍ ԺԷ (ԺԸ)

1 [1]Ի կատարած ի վերայ պատերազմող նա-
հատակի՚՚, ծառայի Տեառն Դաւթի, զոր
խօսեցաւ ընդ Տեառն զբանս օրհնու-
թեան, յաւուր յորում փրկեաց զնա Տէր
ի ձեռաց ամենայն թշնամեաց, եւ ի ձե-
ռաց Սաւուղայ. եւ ասէ,

2 Սիրեցից զքեզ, Տէր, զօրութիւն իմ.
Տէր [2]հաստատիչ իմ, ապաւէն իմ եւ
3 փրկիչ իմ։ Աստուած օգնական իմ եւ
ես յուսամ ի նա, ապաւէն իմ եղջիւր
փրկութեան իմոյ, ընդունելի իմ է՚՚
4 Օրհնելով կարդացից առ Տէր, եւ ի
5 թշնամեաց իմոց ապրեցայց։ Շուրջ ե-
ղեն զինեւ [3]երկունք մահու, եւ ուղխք
անօրէնութեան խռովեցուցին զիս։
6 [3]Վիշտք դժոխոց պաշարեցին զիս, եւ ժա-
7 մանեցին ինձ որոգայթք մահու։ Ի նե-
ղութեան իմում ես առ Տէր կարդացի,
եւ առ Աստուած իմ աղաղակեցի. լուաւ
[4]ինձ ի տաճարէ սրբոյ իւրմէ ձայնի ա-
ղօթից իմոց՚՚, եւ աղաղակ իմ առաջի
8 նորա մտցէ յականջս նորա։ [5]Խռովեցաւ
եւ դողաց երկիր, եւ հիմունք լերանց
սասանեցան եւ խռովեցան, զի բարկա-
9 ցաւ ի վերայ նոցա Աստուած։ Ել ծուխ
ի բարկութենէ նորա, եւ հուր [6]յերեսաց
նորա բորբոքեցաւ, եւ փայլատակունք
10 հատան ի նմանէ։ Խոնարհեցոյց զերկինս
եւ էջ, եւ մէգ ի ներքոյ ոտից նորա։
11 Ել ի քրովբէս եւ թռեաւ, եւ սլացաւ նա
12 ի թեւս հողմոց։ Եդ զխաւար ի ծած-
կոյթ իւր, եւ շուրջ զնովաւ են յարկք
իւր, [7]եւ խաւարային ջուրք մինչեւ
13 յամպս՚՚ օդոց։ Ի փայլատակել նորա ա-
ռաջի նորա, ամպք անցուցին զկարկուտ
14 եւ զկայծակունս հուր։ Որոտաց Տէր
յերկնից, եւ Բարձրեալն ետ զձայն իւր
15 ի կարկուտ եւ ի կայծակունս հուր։ Ա-
ռաքեաց զնետս իւր եւ ցրուեաց զնո-
սա, յաճախեաց զփայլատակունս իւր
16 եւ խռովեցոյց զնոսա։ Երեւեցան ադ-
բերք ջուրց, եւ յայտնեցան հիմունք
աշխարհի, ի սաստէ քումմէ, Տէր, եւ
ի շնչել հողմոյ բարկութեան քո։
17 Առաքեաց ի բարձանց եւ ընկալաւ
զիս, ընկալաւ զիս ի ջուրց բազմաց։
18 [8]Փրկեսցէ զիս Տէր՚՚ ի թշնամեաց իմոց
հզօրաց, եւ յատելեաց իմոց՝ զի հզօրք
19 եղեն քան զիս։ Ժամանեցին ինձ յա-
ւուր չարչարանաց իմոց. եղեւ Տէր հզօ-
20 րիչ իմ. Եւ եհան զիս յանդորր, եւ
փրկեաց զիս Տէր. զի կամեցաւ զիս։
21 Հատուսցէ ինձ Տէր ըստ արդարութեան
իմում, ըստ անբծութեան [9]իմում հա-
22 տուսցէ ինձ։ Ես պահեցից զճանապարհս
Տեառն, եւ ոչ ամպարշտեցայց յԱստու-
23 ծոյ իմմէ։ Ամենայն իրաւունք նորա ա-
ռաջի իմ են, եւ զարդարութիւն [10]իւր ոչ
24 ի բացէ արար՚՚ յինէն։ Եղէց եւ ես ան-
բիծ ընդ նմա, եւ զգուշացայց յանօրէնու-
25 թենէ իմմէ։ Հատուսցէ ինձ Տէր ըստ
արդարութեան իմում, ըստ սրբութեան
ձեռաց իմոց առաջի աչաց իւրոց։
26 [11]Ընդ սրբոյն սուրբ եղիցես, ընդ առն
27 անբծի անբիծ եղիցես՚՚. Ընդ ընտրելոյն
ընտրեալ եղիցես, եւ [12]զթիւրեալն կոր-
28 ծանեսցես՚՚։ Դու զժողովուրդս խոնարհս
կեցուցանես, եւ զաչս ամբարտաւանից
29 դու խոնարհեցուցանես։ Դու լուսաւոր
առնես զճրագ իմ. Տէր Աստուած իմ,
30 լոյս արա ինձ ի խաւարի։ [13]Քեւ փրկե-
ցայց ի փորձութենէ՚՚, Աստուծով իմով
31 անցից ընդ պարիսպ։ Աստուած իմ,
անբիծ են ճանապարհք քո, եւ բանք
Տեառն ընտրեալ են, եւ ապաւէն ամե-
32 նեցուն որք յուսան ի նա։ Վասն զի ո՞վ
է Աստուած՝ բաց ի Տեառնէ, կամ ո՞վ է
[14]Աստուած՝ բաց յԱստուծոյ մերմէ։
33 Աստուած, որ զգեցուցեր ինձ զօրու-
թիւն, եւ եդիր յանբծութեան զճանա-
34 պարհս իմ։ Հաստատեցեր զոտս իմ որ-
պէս զեղջերուի, եւ ի վերայ բարձանց

---

իւրեանց։ (15) Ես արդարութեամբ տեսից զե-
րեսս քո. յագեցայց ի զարթնուլ իմում ի տե-
սիլ քո։

[1]Եբր. Առ գլուխ երաժշտացն [2]Եբր. վէմ իմ, եւ ամրութիւն իմ, եւ փրկիչ իմ։ (3) Աստուած պարիսպ իմ եւ ես յուսամ ի նա, վահան իմ և եղջեւր փրկութեան իմոյ, աշտարակ բարձրութեան իմոյ է։ [3]Եբր. տառունք [4]Եբր. ձայնի իմում ի տաճարէ իւրմէ [5]Եբր. Յայնժամ խռովեցաւ [6]Եբր. ի բերանոյ [7]Եբր. Թանձրութիւն ջուրց, ամպք

[8]Եբր. Փրկեաց զիս [9]Եբր. ձեռաց իմոց [10]Եբր. նորա ոչ ի բաց արարի [11]Եբր. Ընդ ողորմածին ողորմած եղիցես, եւ ընդ առն կատարելոյ կատարեսցիս [12]Եբր. ընդ թիւրեալն թիւրեսցիս [13]Եբր. Զի քեւ արշաւեցից ի վերայ հինի [14]Եբր. վէմ

35 կացուցեր զիս։ Ուսուցեր զձեռս իմ ի
պատերազմ, եւ արարեր զբազուկ իմ որ-
36 պէս զաղեղն հաստ։ Եւ ետուր ինձ
[1]զպաշտպանութիւն փրկութեան քո. աջ
քո ընկալաւ զիս, եւ խրատ քո կանգ-
նեաց զիս ի սպառ, եւ խրատ քո ու-
37 սուսցէ զիս՝։ Ընդարձակեցեր զգնացս
իմ ի ներքոյ իմ, եւ ոչ տկարացան
38 շաւիղք իմ։ Հալածեցից զթշնամիս իմ
եւ հասից նոցա, եւ ոչ դարձայց ի նո-
39 ցանէ՝ մինչեւ սպառեցից զնոսա։ Նե-
ղեցից զնոսա, եւ այլ մի՛ կարասցեն
կալ. եւ անկցին ի ներքոյ ոտից իմոց։
40 Եւ զգեցուցեր ինձ զօրութիւն ի պա-
տերազմի, զյարուցեալսն ի վերայ իմ
41 ի ներքոյ իմ արարեր։ Զթշնամիս իմ հա-
լածականս արարեր, եւ զատեալս իմ
42 սատակեցեր։ Աղաղակեցին, եւ ոչ ոք
էր որ փրկէր զնոսա. կարդացին առ Տէր,
43 եւ ոչ լուաւ նոցա։ Մանրեցից զնոսա
որպէս փոշի առաջի հողմոյ, որպէս կաւ
44 զանհարթ կոխեցից զնոսա։ Փրկեսցէ զիս
Տէր ի հակառակութենէ ժողովրդոց, եւ
կացուսցէ զիս գլուխ հեթանոսաց. ժո-
45 ղովուրդ զոր ոչ գիտէի ծառայեաց ինձ. Եւ
ի լուր ականջաց լուաւ ինձ, որդիք օտա-
46 րաց ստեցին ինձ։ Որդիք օտարաց մաշե-
ցան եւ [2]կաղացան ի շաւղաց՝ իւրեանց։
47 Կենդանի է Տէր եւ օրհնեալ է [3]Աս-
տուած, եւ բարձր եղիցի Աստուած
48 փրկութեան իմոյ։ Աստուած է որ խնդրէ
զվրէժ իմ, եւ հնազանդ առնէ զժողո-
49 վուրդս ընդ ինեւ։ Փրկիչ իմ ի թշնամեաց
իմոց [4]բարկացողաց, յայնցանէ որ յա-
րուցեալ են ի վերայ իմ բարձր արարեր
զիս, եւ յառնէ անիրաւէ փրկեցեր զիս։
50 Վասն այսորիկ խոստովան եղէց քեզ ի
հեթանոսս, եւ անուան քում սաղմոս
51 ասացից։ Մեծ արարեր զփրկութիւն
թագաւորի նորա, առնել ողորմութիւն
ընդ օծելոյ նորա ընդ Դաւթի, եւ ընդ
զաւակի նորա ազգէ մինչեւ յազգ։

## ՍԱՂՄՈՍ ԺԸ (ԺԹ)

1 [5]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

2 Երկինք պատմեն զփառս Աստուծոյ, եւ
զարարածս ձեռաց նորա պատմէ հաս-
3 տատութիւն։ Օր աւուր բղխէ զբան,
եւ գիշեր գիշերի ցուցանէ զգիտութիւն։
4 Ոչ են բանք եւ ոչ են խօսք, որոց ոչ
5 լսին ձայնք նոցա։ Ընդ ամենայն երկիր
ել բարբառ նոցա, մինչեւ ի ծագս աշ-
5 խարհի են խօսք նոցա։ [6]Յարեւու եհար
զխորան իւր՝, եւ ինքն որպէս փեսայ
զի ելանէ յառագաստէ իւրմէ, ցնծայ
նա որպէս սկայ յընթանալ զճանապարհս
7 իւր։ Ի ծագաց երկնից են ելք նորա,
[7]հանգիստ նորա մինչեւ ի ծագս նո-
րուն. եւ ոչ ոք իցէ որ թաքիցէ ի տա-
պոյ նորա։
8 Օրէնք Տեառն ամբիծ են եւ դարձու-
ցանեն զհոգիս. վկայութիւն Տեառն հա-
ւատարիմ է, եւ իմաստուն առնէ զտղայս։
9 [8]Արդարութիւնք Տեառն ուղիղ են եւ
ուրախ առնեն զսիրտս, պատուիրանք
10 Տեառն լոյս են եւ լոյս տան աչաց։ Եր-
կիւղ Տեառն սուրբ է եւ մնայ յաւի-
տեան, դատաստանք Տեառն ճշմարիտ
11 է, եւ արդար ի նմին։ Ցանկալի է նա
քան զոսկի եւ քան [9]զականս պատուա-
կանս բազումս, քաղցր է նա քան զմե-
12 ղու խորիսխ՝։ Բանզի ծառայ քո պահես-
ցէ զայս, ի պահել նմա հատուցումն
բազում։
13 Զյանցուածս իւր ո՞վ կարէ ածել ի
միտ. ի գաղտնեաց իմոց սուրբ արա
14 զիս, Տէր. [10]Եւ յօտարէն՝ պահեա զծա-
ռայս քո. ապա թէ ոչ տիրեսցեն ինձ.
յայնժամ ամբիծ եղէց, եւ սուրբ եղէց
15 ի մեղաց մեծաց։ Եղիցին քեզ հաճոյ բանք
բերանոյ իմոյ, եւ խորհուրդք սրտի իմոյ
առաջի քո յամենայն ժամ, Տէր [3]օգնա-
կան իմ՝ եւ փրկիչ իմ։

## ՍԱՂՄՈՍ ԺԹ (Ի)

1 [5]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

2 Լուիցէ քեզ Տէր յաւուր անձկութեան,
օգնական եղիցի քեզ անուն Աստուծոյ
3 Յակոբայ։ Առաքեսցէ քեզ Տէր օգնու-
թիւն ի սրբութենէ իւրմէ, եւ ի Սիովնէ
4 ընկալցի զքեզ։ Յիշեսցէ Տէր զամենայն
պատարագս քո, եւ զուխտս քո ընդու-
5 նելի արասցէ։[11] Տացէ քեզ Տէր ըստ
սրտի քում, եւ զամենայն խորհուրդս
6 քո նա կատարեսցէ։ Ցնծասցուք մեք

[1] Եբր. զվահան փրկութեան քո. եւ աջ քո զօրացոյց զիս. եւ հեզութիւն քո մեծացոյց զիս
[2] Եբր. սարսափեցան ի նեղարանէնէ
[3] Եբր. Վէմ իմ
[4] Յեբր. պակասէ
[5] Եբր. Առ գլուխ երաժշտացն

[6] Եբր. Արեգական եհար խորան ի նոսա
[7] Եբր. շրջան
[8] Եբր. Կանոնք
[9] Եբր. զոսկի փորձեալ յոյժ. քաղցր է նա քան զմեղր, եւ քան զմեղր հոսեալ ի խորսխէ։
[10] Եբր. Յամբարտաւանից եւս
[11] Եբրայեցին յաւելու, Հանգիստ։

ի փրկութեան քում, յանուն Աստուծոյ
մերոյ [1]մեք մեծք եղիցուք". լցուսցէ
Տէր զամենայն խնդրուածս քո։
7 Այժմ ծանեայ՝ զի կեցոյց Տէր զօծեալ
իւր. լուաւ նմա յերկնից ի սրբութենէ
իւրմէ, ի զօրութիւն փրկութեան աջոյ
8 իւրոյ։ Սոքա կառօք եւ սոքա երիվա-
րօք, այլ մեք զանուն Տեառն Աստու-
9 ծոյ մերոյ կարդասցուք։ Նոքա խափա-
նեցան եւ անկան, մեք յարեաք եւ ու-
10 ղիղք եղաք։ Տէր, կեցո զթագաւորն,
եւ լուր մեզ յաւուր յորում կարդաս-
ցուք առ քեզ։

## ՍԱՂՄՈՍ Ի (ԻԱ)

1 [2]Ի կատարած. Սաղմոս Դաւթի.

2 Տէր, ի զօրութեան քում ուրախ եղի-
ցի թագաւորն, ի փրկութեան քում
3 ցնծասցէ յոյժ։ Զցանկութիւն սրտի նո-
րա ետուր նմա, եւ զկամս շրթանց նո-
4 րա ոչ արգելեր ի նմանէ։[3] Ժամանն ա-
բարեր զնա յօրհնութիւն քաղցրութեան
քո, եւ եդիր ի գլուխ նորա պսակ [4]ի
5 քարէ պատուականէ"։ Կեանս խնդրեաց
ի քէն, եւ ետուր նմա ընդ երկայն ա-
6 ւուրս, յաւիտեանս յաւիտենից։ Մեծ
են փառք նորա ի փրկութեան քում,
զփառս եւ զմեծվայելչութիւն դիցես ի
7 վերայ նորա։ Տացես զնա յօրհնութիւն
յաւիտեանս յաւիտենից, ուրախ արաս-
ցես զնա յուրախութիւն երեսաց քոց։
8 Թագաւոր յուսացաւ ի Տէր, յողորմու-
թենէ Բարձրելոյն նա մի՛ սասանեսցի։
9 Գտցի ձեռն քո ի վերայ թշնամեաց
քոց, եւ աջ քո գտցէ զամենայն ատե-
10 լիս քո։ Դիցես զնոսա որպէս հնոց
հրոյ՝ ի ժամանակի [5]երեսաց քոց". Տէր
բարկութեամբ իւրով խռովեցուսցէ զնո-
11 սա, եւ հուր կերիցէ զնոսա։ Պտուղ
նոցա յերկրէ կորիցէ, եւ զաւակ նոցա
12 յորդւոց ի մարդկանէ։ Խորհեցան ի քէն
չարութեամբ, խորհեցան խորհուրդ զոր
13 ոչ կարասցեն հաստատել։ Արասցես զնո-
սա հալածեալս, [6]ի մնացուածս քո պատ-
14 րաստեսցես զերեսս" նոցա։ Բարձր լեր,
Տէր, ի զօրութեան քում. օրհնեսցուք,
եւ սաղմոս ասասցուք զօրութեան քում։

[1] Եբր. կանգնեսցուք նշան  [2] Եբր. Առ գլուխ երաժշտացն  [3] Եբր. [illegible], Հանգիստ։  [4] Եբր. յոսկւոյ սրբոյ  [5] Ա. [illegible], բարկութեան քո  [6] Եբր. յաղեղունս քո պատրաստ եղիցես ընդդէմ

## ՍԱՂՄՈՍ ԻԱ (ԻԲ)

1 [7]Ի կատարած. վասն առաւօտին օգնա-
կանութեան". Սաղմոս Դաւթի։

2 [8]Աստուած, Աստուած իմ, նայեաց առ
իս", ընդէ՞ր թողեր զիս. հեռի եղեր ի
փրկութենէ իմմէ՝ [9]վասն բանից յանցա-
3 նաց իմոց"։ Աստուած իմ, ի տուէ կար-
դացի առ քեզ, եւ ինձ ոչ լուար. ի գի-
4 շերի՝ եւ [10]ինձ ոչ անսացեր։ Դու ի
սուրբս բնակեալ ես, գովեալդ Իսրա-
5 յելի"։ Ի քեզ յուսացան հարքն մեր,
յուսացան ի քեզ եւ փրկեցեր զնոսա։
6 Առ քեզ աղաղակեցին եւ կեցին, ի քեզ
յուսացան եւ ոչ ամաչեցին։
7 Այլ ես որդն եմ եւ ոչ եմ մարդ, նա-
խատինք մարդկան եւ արհամարհանք
8 ժողովրդոց։ Ամենեքեան որ տեսանէին
զիս արհամարհէին զինեւ, խօսէին
շրթամբք եւ շարժէին զգլուխս իւրեանց։
9 Յուսացաւ ի Տէր եւ փրկեսցէ զնա, կե-
10 ցուսցէ զնա զի կամի զնա։ Դու ես որ
հաներ զիս յարգանդէ, յոյս իմ ի ստեանց
11 մօր իմոյ։ Ի քեզ անկայ ես յարգանդէ,
յորովայնէ մօր իմոյ, դու ես Աստուած
12 իմ։ Մի՛ ի բացեայ աներ յինէն, զի նե-
ղութիւնք մերձեալ են, եւ ոչ ոք է որ
13 օգնէ ինձ։ Շուրջ եղեն զինեւ զուա-
րակք բազումք, եւ ցուլք [11]գէրք պա-
14 շարեցին զիս։ Բացին ի վերայ իմ զբե-
րանս իւրեանց, որպէս առեւծ զի մռնչէ
15 եւ յափշտակէ։ Ես որպէս զջուր հեղայ,
եւ ցրուեցան ամենայն ոսկերք իմ, եւ ե-
ղեւ սիրտ իմ որպէս մոմ հալեալ ի
16 մէջ որովայնի իմոյ։ Չորացաւ որպէս
խեցւոյ զօրութիւն իմ, լեզու իմ ի քիմս
իմ կցեցաւ, եւ ի հող մահու [12]իջուցին
17 զիս։ Շուրջ եղեն զինեւ շունք բա-
զումք, եւ ժողովք չարաց պաշարեցին
18 զիս։ Ծակեցին զձեռս իմ եւ զոտս իմ,
եւ [13]թուեցին զամենայն ոսկերս իմ.
19 նոքա հայեցան եւ տեսին զիս։ Բաժա-
նեցին զհանդերձս իմ ի մէջ իւրեանց,
եւ ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս
20 արկանէին։ Դու, Տէր, մի՛ հեռի [14]առ-
ներ զօգնականութիւն քո յինէն, եւ,

[7] Եբր. Առ գլուխ երաժշտացն. ի վերայ Այելէթ Շահարի  [8] Եբր. Աստուած իմ, Աստուած իմ  [9] Եբր. ի բանից աղաղակի իմոյ  [10] Եբր. ոչ դադարեցից։ (4) Դու սուրբ ես, բնակեալդ ի գովութիւնս Իսրայելի  [11] Եբր. Բասանու  [12] Եբր. իջուցեր  [13] Եբր. թուեցից  [14] Եբր. առներ. զօրութիւն իմ, փութա օգնել ինձ

21 Տէր, յօգնել ինձ նայեաց"։ Փրկեա ի
սրոյ զանձն իմ, եւ ի ձեռաց շանց զմիա-
22 մօրութիւն իմ։ Փրկեա զիս ի բերանոյ
առիւծու, յեղջերէ միեղջերւոյ [1]զխոնար-
հութիւն իմ"։
23 Պատմեցից զանուն քո եղբարց իմոց,
24 ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զքեզ։ Եր-
կիւղածք Տեառն, օրհնեցէք զՏէր. ա-
մենայն զաւակն Յակոբայ փառաւոր
արասցեն զնա. եւ երկիցէ ի Տեառնէ ա-
25 մենայն զաւակն Իսրայելի։ Զի ոչ ար-
համարհեաց եւ ոչ անարգեաց Տէր զա-
ղօթս աղքատին, եւ ոչ դարձոյց զերեսս
իւր [2]յինէն, այլ ի կարդալ [3]իմում առ
26 նա լուաւ [4]ինձ։ Ի քէն է գովութիւն
[5]իմ, յեկեղեցւոջ մեծ օրհնեցից զքեզ".
զուխտս իմ կատարեցից առաջի ամե-
նայն երկիւղածաց նորա։
27 Կերիցեն աղքատք եւ յագեսցին, օրհ-
նեսցեն զՏէր որք խնդրեն զնա. կեցցեն
սիրտք [6]նոցա յաւիտեանս յաւիտենից։
28 Յիշեսցեն եւ դարձցին առ Տէր ամենայն
ծագք երկրի. երկիր պագցեն [7]նմա ա-
29 մենայն ազգք ազգաց։ Զի Տեառն է
արքայութիւն, եւ նա տիրէ ի վերայ
30 ամենայն հեթանոսաց։ Կերան եւ երկիր
պագին նմա ամենայն պարարտք երկ-
րի. առաջի նորա անկցին ամենեքեան
31 որ իջանեն [8]ի հող։ Անձն իմ նմա կե-
ցեալ, եւ զաւակ իմ" ծառայեսցէ նմա։
32 Պատմեսցի զՏեառնէ ազգի որ գալոց
է. պատմեսցեն զարդարութիւն նորա
ժողովրդեանն որ ծնանելոցն իցէ, [9]զոր ա-
րար Տէր"։

## ՍԱՂՄՈՍ ԻԲ (ԻԳ)

1 Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

2 Տէր հովուեսցէ զիս, եւ ինձ ինչ ոչ պա-
կասեսցէ։
Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս,
եւ առ ջուրս հանգստեան սնոյց զիս։
3 Դարձոյց զանձն իմ առ իս, առաջնոր-
դեաց ինձ ի ճանապարհս արդարութեան
4 վասն անուան իւրոյ։ Թէպէտեւ գնա-
ցից ես [10]ի մէջ ստուերաց մահու, ոչ եր-
կեայց ի չարէ. զի դու, Տէր, ընդ իս ես.
ցուպ քո եւ գաւազան, նոքա մխիթա-
5 րեցին զիս։ Պատրաստ արարեր առա-
ջի իմ սեղան, առն յանդիման նեղչաց
իմոց. օծեր իւղով զգլուխ իմ, [11]բաժակ
քո որպէս անապակ արբեցոյց զիս։
6 Ողորմութիւն քո, Տէր, զհետ իմ եկես-
ցէ" զամենայն աւուրս կենաց իմոց, բնա-
կել ինձ ի տան Տեառն ընդ երկայն ա-
ւուրս։

## ՍԱՂՄՈՍ ԻԳ (ԻԴ)

Սաղմոս Դաւթի. միաշաբաթուն։

1 Տեառն է երկիր լրիւ իւրով, աշխարհ
2 եւ ամենայն բնակիչք նորա։ Նա ինքն
ի վերայ ծովու հիմունս արկ նմա, ի
վերայ գետոց պատրաստեաց զնա։
3 Ո՞վ ելցէ ի լեառն Տեառն, կամ ո՞վ կաց-
4 ցէ ի տեղւոջ սրբութեան նորա։ Որ սուրբ
է ձեռօք եւ անբիծ սրտիւ, որ ոչ առ
ընդունայնութիւնս յանձն իւր, եւ ոչ եր-
դուաւ նենգութեամբ ընդ ընկերի իւ-
5 րում"։ Սա առցէ զօրհնութիւն ի Տեառ-
նէ, [12]ողորմութիւն յԱստուծոյ փրկչէ
6 իւրմէ։ Այս ազգ է որ խնդրէ զՏէր,
խնդրէ տեսանել զերեսս Աստուծոյ Յա-
7 կոբայ[13]։ Համբարձէք, [14]իշխանք, զդրունս
ձեր ի վեր, համբարձցին" դրունք յա-
ւիտենից, եւ մտցէ Թագաւոր փառաց։
8 Ո՞վ է սա Թագաւոր փառաց, Տէր
հզօր զօրութեամբ իւրով, Տէր հզօր
9 ի պատերազմի։ Համբարձէք, [14]իշխանք,
զդրունս ձեր ի վեր, համբարձցին"
դրունք յաւիտենից եւ մտցէ Թագաւոր
10 փառաց։ Ո՞վ է սա Թագաւոր փառաց,
Տէր զօրութեանց. սա ինքն է Թագա-
ւոր փառաց։[13]

## ՍԱՂՄՈՍ ԻԴ (ԻԵ)

1 Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

2 Առ քեզ, Տէր, համբարձի զանձն իմ.
3 Աստուած իմ, ի քեզ յուսացայ, մի ա-
մաչեցից, եւ մի ծիծաղեսցին զինեւ
4 թշնամիք իմ։ Ամենեքեան որք համ-
բերեն քեզ՝ մի ամաչեսցեն, այլ ամա-
չեսցեն անօրէնք յունայնութեան իւ-
5 րեանց։ Զճանապարհս քո, Տէր, ցոյց
ինձ, եւ զշաւիղս քո ուսո ինձ. առաջ-
նորդեա ինձ ի ճշմարտութեան քում եւ

[1] Եբր. առեր ինձ պատասխանի [2] Եբր. ի նմանէ [3] Եբր. նորա [4] Յեբր. [illegible] [5] Եբր. իմ յեկեղեցիս մեծս [6] Եբր. ձեր [7] Եբր. առաջի քո [8] Եբր. ի հող. եւ նա որ ոչ ապրեցուցանէ զանձն։ (31) Զաւակն [9] Եբր. զի նա արար [10] Եբր. ի մէջ ձորոյ

[11] Եբր. բաժակ իմ լի է։ (6) Արդարեւ բարութիւն և ողորմութիւն զհետ իմ եկեսցեն [12] Կամ, զարդարութիւն [13] Եբրայեցին յաւելու, Հանգիստ [14] Եբր. դրունք, զգլուխս ձեր ի վեր. ամբարձարուք,

ուսո զիս, զի դու ես Աստուած փրկիչ
իմ. եւ ես քեզ համբերի զօրհանապազ։
6 Յիշեա, Տէր, զգթութիւնս քո եւ զողոր-
7 մութիւնս որ են յաւիտենից։ Զմեղս
մանկութեան իմոյ եւ զանգիտութեան ի-
մոյ մի՛ յիշեր, այլ յիշեա զիս, Տէր, ըստ
ողորմութեան քում՝ վասն քաղցրութեան
8 քո. Զի քաղցր եւ ուղիղ ես, Տէր. վասն
այսորիկ օրէնադրէս ամենես զմեղաւորս ի
9 ճանապարհի։ Առաջնորդես հեզոց ի դա-
տաստանի, եւ ուսուցանես հեզոց զճանա-
10 պարհս քո։ Ամենայն ճանապարհք Տեառն
ողորմութեամբ եւ ճշմարտութեամբ են
այնոցիկ, որ խնդրեն զուխտ եւ զվկայու-
11 թիւն նորա։ Վասն անուան քո, Տէր,
քաւեա զմեղս իմ, զի բազում եղեն։
12 Ո՞վ է մարդ որ երկնչի ի Տեառնէ. օ-
րէնսդէտ անէ զնա ի ճանապարհի յոր
13 եւ հաճեցաւ։ Անձն նորա ի բարութեան
հանգիցէ, եւ զաւակ նորա ժառանգես-
14 ցէ զերկիր։ [1]Զօրութիւն է Տէր" եր-
կիւղածաց իւրոց, եւ զկտակարանս իւր
15 ուսուցանէ նոցա։ Աչք իմ յամենայն ժամ
առ Տէր են, եւ նա հանէ յորոգայթէ զոտս
16 իմ։ Նայեա առ իս եւ ողորմեա ինձ,
17 զի միամօր եւ աղքատ եմ ես։ Նեղու-
թիւնք սրտի իմոյ բազում եղեն յոյժ,
18 եւ ի վշտաց իմոց հան զիս։ Տես զխո-
նարհութիւն իմ եւ զվաստակ իմ, եւ
19 թող ինձ զամենայն մեղս իմ։ Տես
զթշնամիս իմ զի բազում եղեն, ատե-
լութիւն զոր ի նանիր ատեցին զիս։
20 Պահեա զանձն իմ եւ փրկեա զիս, եւ
մի՛ յամօթ եղէց զի յուսացայ ի քեզ։
21 [2]Անմեղք եւ ուղիղք կցորդ եղեն ինձ,
22 եւ" ես քեզ համբերի։ Փրկեա, Աստուած,
զԻսրայէլ յամենայն նեղութեանց նորա։

## ՍԱՂՄՈՍ ԻԵ (ԻԶ)

[3]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

1 Դատ արա ինձ, Տէր, զի ես յամբծու-
թեան իմում գնացի, ի Տէր յուսացայ
2 զի մի՛ [4]եղէց հիւանդ"։ Փորձեա զիս,
Տէր, եւ քննեա զիս, փորձեա զերի-
3 կամունս իմ եւ զսիրտ իմ։ Ողորմու-
թիւն քո, Տէր, առաջի աչաց իմոց, եւ
4 [5]հաճոյ եղէց" ճշմարտութեան քում։ Ոչ
նստայց ես յաթոռ նանրաց, եւ ընդ
5 անօրէնս ես ոչ մտից։ Ատեցի ես զժո-
ղովս չարաց, եւ ընդ ամպարիշտս ես
6 ոչ նստայց։ Լուացայց սրբութեամբ
զձեռս իմ, եւ շուրջ եկեց զսեղանով
7 քով, Տէր։ [6]Լսել ինձ" զձայն օրհնութեան
քո, եւ պատմել զամենայն սքանչելիս
8 քո։ Տէր, սիրեցի զվայելչութիւն տան
9 քո, եւ զտեղի յարկի փառաց քոց։ Մի՛
կորուսաներ ընդ ամպարիշտս զանձն իմ,
եւ մի՛ ընդ արս արիւնահեղս զկեանս
10 իմ։ Որոց ձեռք ի բեանց յանօրէնու-
թեան են, եւ աջ նոցա լի է կաշառօք։
11 Ես յամբծութեան իմում գնացի, փրկեա
12 զիս, Տէր, եւ ողորմեա ինձ։ Ոտն իմ
կացցէ յուղղութեան, յեկեղեցիս [7]մեծա
օրհնեցից զքեզ"։

## ՍԱՂՄՈՍ ԻԶ (ԻԷ)

Սաղմոս Դաւթի, [3]մինչչեւ օծեալ էր։"

1 Տէր լոյս իմ եւ [8]կեանք իմ, ես յումմէ՞
երկեայց. Տէր ապաւէն կենաց իմոց,
2 ես յումմէ՞ դողայցայց։ Ի մերձենալ առ
իս չարաց ուտել զմարմինս իմ, նեղիչք
իմ եւ թշնամիք իմ նոքա տկարացան եւ
3 անկան։ Թէ պատրաստեսցի ի վերայ իմ
պատերազմ, ոչ երկիցէ սիրտ իմ. թէ
յարիցէ ի վերայ իմ ճակատամարտ, սա-
կայն եւ յայսմիկ ի քեզ, Տէր, յուսա-
4 ցայց։ Զմի խնդրեցի ի Տեառնէ եւ զայն
աղաչեմ, բնակել ինձ ի տան Տեառն
զամենայն աւուրս կենաց իմոց. տեսա-
նել ինձ զվայելչութիւն Տեառն, եւ
5 [9]հրաման տալ" ի տաճարի նորա։ Ծած-
կեաց զիս ի խորանի իւրում յաւուր չա-
րի, ընդ յարկաւ արար զիս ի ծածկոյթ
խորանի իւրում. ի վիմի բարձր արա-
6 րեր զիս։ Եւ այժմ բարձր արա զգլուխ
իմ ի վերայ թշնամեաց [10]իմոց. շուրջ
եկեց" եւ մատուցից ի խորանի նորա
պատարագ օրհնութեան, օրհնեցից եւ
7 սաղմոս ասացից Տեառն։ Լուր, Տէր,
ձայնի իմում, զի կարդացի առ քեզ.
8 ողորմեա ինձ եւ լուր ինձ։ Զի քեզ ասաց
սիրտ իմ,[11]եւ խնդրեցին երեսք իմ," զերեսս
9 քո, Տէր, խնդրեցից։ Մի՛ դարձուցաներ
զերեսս քո յինէն, եւ մի՛ խոտորիր բար-
կութեամբ ի ծառայէ քումմէ. օգնական
իմ լեր, Տէր, եւ մի՛ անարգեր զիս, եւ

---

[1] Եբր. Գաղտնիք, խոր. ընտանութիւն Տեառն է ընդ
[2] Եբր. Անբծութիւն եւ ուղղութիւն պահեսցեն զիս, քանզի
[3] Եբր. Դաւթի
[4] Եբր. սասանեցայց
[5] Եբր. գնացի ի

[6] Եբր. Զի տաց լսել
[7] Եբր. օրհնեցից զՏէր
[8] Եբր. փրկութիւն
[9] Եբր. խնդրել զն–
[10] Եբր. իմոց որ շուրջ են զինեւ,
[11] Եբր. Խնդրեցէք զերեսս իմ.

մի՛ թողուր զիս, Աստուած փրկիչ իմ։
10 Հայր իմ եւ մայր իմ թողին զիս, եւ
11 Տէր ընկալաւ զիս։ Օրէնսգէտ արա զիս,
Տէր, ի ճանապարհի քում, եւ առաջնորդ-
12 եա ինձ ի շաւիղս քո ուղիղս։ Վասն
թշնամեաց իմոց, մի՛ մատներ զիս ի ձեռս
նեղչաց իմոց. յարեան ի վերայ իմ վկայք
մեղաց, եւ ստեցին ինձ յանօրէնութեան
13 իւրեանց։ Հաւատացի տեսանել զբա-
րութիւն Տեառն յերկրին կենդանեաց։
14 Համբեր Տեառն եւ քաջալերեաց, զօ-
րասցի սիրտ քո եւ համբեր Տեառն։

## ՍԱՂՄՈՍ ԻԷ (ԻԸ)

Սաղմոս Դաւթի։

1 Առ քեզ, Տէր, կարդացի. [1]Աստուած
իմ, մի՛ լռեր յինէն. մի՛ երբեք լռեսցես
յինէն, զի մի՛ նմանիցիմ այնոցիկ որք ի-
2 ջանեն ի գուբ։ Լուր, Տէր, ձայնի
խնդրուածոց իմոց յաղաչել ինձ առ քեզ,
ի համբառնալ ձեռաց իմոց ի տաճար
3 սուրբ քո։ Մի՛ համարիր ընդ ամպա-
րիշտս զանձն իմ, եւ մի՛ ընդ այնոսիկ
որք գործեն զանօրէնութիւն՝ կորուսա-
ներ զիս. որք խօսէին զխաղաղութիւն
ընդ ընկերս իւրեանց, եւ չարութիւն է
4 ի սիրտս նոցա։ Տուր նոցա, Տէր, ըստ
գործոց նոցա, ըստ անօրէնութեան գնա-
ցից նոցա հատո նոցա. ըստ գործոց ձե-
ռաց նոցա հատո նոցա՝ զհատուցումն
5 նոցա նոցին։ Ոչ իմացան նոքա զգործս
Տեառն, եւ ոչ ի գործս ձեռաց նորա հա-
յեցան. կործանեսցես զնոսա եւ այլ մի՛
6 շինեսցին։ Օրհնեալ է Տէր զի լուաւ
7 ձայնի աղօթից իմոց։ Տէր օգնական իմ
եւ պաշտպան իմ. ի նա յուսացաւ սիրտ
իմ, օգնեցաւ եւ զուարճացաւ մարմին
իմ. եւ ես [2]կամօք իմովք խոստովան եղէց
8 նմա։ Տէր զօրութիւն ժողովրդեան իւ-
րոյ, ապաւէն փրկութեան օծելոյ իւ-
9 րոյ։ Փրկեա զժողովուրդս քո, եւ օրհ-
նեա զժառանգութիւնս քո, հովուեա եւ
բարձրացո զնոսա մինչեւ յաւիտեան։

## ՍԱՂՄՈՍ ԻԸ (ԻԹ)

Սաղմոս Դաւթի։

1 Մատուցէք Տեառն, որդիք [3]Աստուծոյ,
մատուցէք Տեառն զորդիս խոյոց". մա-
տուցէք Տեառն զփառս եւ զպատիւ։

[1]Եբր. Վէմ [2]Եբր. երգովք [3]Եբր. Հզօրաց

2 Մատուցէք Տեառն զփառս անուան նո-
րա. եւ երկիր պագէք Տեառն [4]ի սրահ
սրբութեան նորա"։
3 Ձայն Տեառն ի վերայ ջուրց, եւ Աս-
տուած փառաց որոտաց, եւ Տէր ինքն
4 ի վերայ ջուրց բազմաց։ Ձայն Տեառն
զօրութեամբ, եւ ձայն Տեառն մեծվա-
5 յելչութեամբ։ Ձայն Տեառն փշրէ զմայրս,
եւ մանրէ Տէր զմայրսն Լիբանանու։
6 [5]Մանրեսցէ զնոսա որպէս զմատաղա-
տունկն Լիբանանու, որ սիրելին է որպէս
7 զորդիս միեղջերւոյ"։ Ձայն Տեառն հա-
8 տանէ զբոց ի հրոյ։ Ձայն Տեառն շարժէ
զանապատն, եւ խռովեցուցանէ Տէր զա-
9 նապատն Կադէս։ Ձայն Տեառն [6]հաստա-
տէ զեղջերուս", եւ յայտնի առնէ զան-
տառս. ի տաճարի նորա ամենեքեան
10 ասասցեն զփառս նորա։ Տէր [7]զջրհեղեղս
զնստուցանէ եւ ցածուցանէ", թագա-
11 ւորեսցէ Տէր յաւիտեան։ Տէր զօրու-
թիւն ժողովրդեան իւրոյ տացէ, եւ օրհ-
նեսցէ զժողովուրդ իւր ի խաղաղութիւն։

## ՍԱՂՄՈՍ ԻԹ (Լ)

Սաղմոս օրհնութեանց, նաւակատեաց
տաճարին, Դաւթի։

1 Բարձր առնեմ զքեզ, Տէր, զի [8]ընկա-
լար զիս, եւ ոչ ուրախ արարեր զթշնա-
2 մին իմ յիս։ Տէր Աստուած իմ, կար-
3 դացի առ քեզ եւ բժշկեցեր զիս. Տէր,
4 հաներ ի դժոխոց զանձն իմ, փրկեցեր զիս
յայնցանէ որ իջանեն ի գուբ։
5 Սաղմոս ասացէք Տեառն, սուրբք նո-
րա, խոստովան եղերուք յիշատակի
6 սրբութեան նորա։ [9]Սրտմտութիւն է ի
բարկութեան նորա, եւ կեանք են ի կա-
մաց նորա. ընդ երեկոյս հանգիցեն լա-
լիք, առաւօտու եղիցի ուրախութիւն։
7 Ես ասացի ի բարեկենդանութեան ի-
մում, թէ Ոչ սասանեցայց յաւիտեան։
8 Տէր, ի կամս քո ետուր [10]գեղոյ իմոյ
զօրութիւն, դարձուցեր զերեսս քո յի-
9 նէն՝ եւ ես եղէ խռովեալ։ Առ քեզ,
Տէր, կարդացի, եւ առ Աստուած իմ ա-
10 ղաղակեցի։ Զի՞նչ օգուտ է քեզ յարե-

[4]Եբր. ի վայելչութիւն սրբութեան [5]Եբր. Տայ խայտալ նոցա իբրեւ զորթ, Լիբանանու եւ Սիրիոնի՝ իբրեւ զորդիս միեղջերւոյ։ [6]Եբր. տայ ծնանել եղջերուաց [7]Եբր. Նստի ի վերայ ջուրց հեղեղաց [8]Եբր. փրկեցեր [9]Եբր. Վայրկեան [10]Եբր. լերին

նէ իմմէ, թէ իջանիմ ես յապականու-
թիւն. մի թէ հող խոստովա՞ն առնիցի
առ քեզ, կամ պատմեսցէ՞ զճշմարտու-
11 թիւնս քո։ Լուաւ ինձ Տէր եւ ողորմե-
12 ցաւ, եւ Տէր եղեւ ինձ օգնական։ Դար-
ձոյց զսուգ իմ յուրախութիւն, զերծ
յինէն զքուրձ եւ ինձ զգեցոյց զուրախու-
13 թիւն։ Որպէս սաղմոս ասասցեն քեզ
փառք իմ, եւ այլ մի՛ եւս զղջացայց. Տէր
Աստուած իմ, յաւիտեան խոստովան ե-
ղէց քեզ։

## ՍԱՂՄՈՍ Լ (ԼԱ)

1 [1]Ի կատարած. օրհնութիւն նուագա-
կութեան՞ Սաղմոս Դաւթի,

2 Ի քեզ, Տէր, յուսացայ, մի՛ ամաչեցից
յաւիտեան. յարդարութեան քում փրկեա
3 եւ ապրեցո զիս։ Խոնարհեցո առ իս
զունկն քո, փութապէս կեցուցանել
զիս. լեր [2]իմ, Աստուած, պաշտպան՞
եւ տուն ապաւինի ապրեցուցանել զիս.
4 Զի [3]հզօրիչ իմ եւ ապաւէն իմ դու ես.
վասն անուան քո առաջնորդեսցես ինձ,
5 եւ անուցես զիս. Եւ հանցես զիս յորո-
գայթէ յայսմանէ որ թաքուցաւ ինձ.
6 զի դու ես պաշտպան իմ, Տէր։ Ի ձեռս քո
յանձն առնեմ զհոգի իմ. փրկեցեր զիս,
Տէր [4]Աստուած, ճշմարտութեամբ քով։
7 Ատեցեր՞ զայնոսիկ որ պահեն զերկեւլ
8 ի սնոտիս. ես ի Տէր յուսացայ։ Ցնծա-
ցայց եւ ուրախ եղէց [5]ի փրկութեան
քում. հայեցար ի խոնարհութիւն իմ,
9 եւ փրկեցեր ի վշտաց զանձն իմ. Եւ
ոչ մատնեցեր զիս ի ձեռս թշնամեաց իմոց,
եւ կացուցեր յանդորրու զոտս իմ։
10 Ողորմեա ինձ, Տէր, զի նեղեալ եմ ես.
խռովեցաւ ի սրտմտութենէ ակն իմ՝
11 անձն իմ եւ փոր իմ։ Պակասեցան ի
ցաւոց կեանք իմ, եւ ամք իմ յոգւոց
եղանելոյ. աղքատացաւ ի տկարութենէ
զօրութիւն իմ, եւ ոսկերք իմ խռովե-
12 ցան։ Քան զամենայն թշնամիս իմ եղէ
ես նախատ դրացեաց իմոց յոյժ, ահ եւ
երկիւղ ծանօթից իմոց. ամենեքեան որք
տեսանէին զիս արտաքս, փախչէին յի-
13 նէն։ Մոռացեալ եղէ ես որպէս մեռեալ
ի սրտէ, եւ եղէ ես որպէս զանօթ կո-
14 րուսեալ։ Զի լուայ ես զբամբասանս
բազմաց՝ որք շուրջ էին զինեւ, ի ժո-
ղովել նոցա ի միասին՝ առնուլ զանձն
իմ խորհեցան։
15 Այլ ես ի քեզ, Տէր, յուսացայ, ա-
16 սացի՝ Դու ես Աստուած իմ. Եւ ի ձեռս
քո [6]է ժառանգութիւն՞ իմ. փրկեա զիս
ի ձեռաց թշնամեաց իմոց եւ ի հալած-
17 չաց իմոց։ Երեւեցո զերեսս քո ի ծա-
ռայս քո, ապրեցո զիս, Տէր, ըստ ո-
ղորմութեան քում։
18 Տէր, մի՛ յամօթ եղէց զի կարդացի
առ քեզ. ամաչեսցեն ամպարիշտք եւ
19 իջցեն ի դժոխս. Եւ համր եղիցին շրթունք
նենգաւորք՝ որք խօսէին զարդարոյ զա-
նիրաւութիւն յամբարտաւանութեան եւ
յանգոսնել բերանոց։
20 Որպէս զի՜ բազում է ողորմութիւն
քաղցրութեան քո, Տէր, զոր պահեցեր
երկիւղածաց քոց. արարեր դու այնո-
ցիկ որք յուսացեալ են ի քեզ, առաջի
21 որդւոց մարդկան։ Ամրացուցեր զնոսա
ի ծածկոյթ երեսաց քոց ի խռովութենէ
մարդկան. ծածկեցեր զնոսա ի խորանի
22 քում ի հակառակութենէ լեզուաց։ Օրհ-
նեալ է Տէր, զի սքանչելի արար զո-
ղորմութիւն իւր ինձ ի քաղաք ամուր։
23 Ես ասացի ի զարմանալ իմում, թէ
Ընկեցայ ուրեմն յերեսաց աչաց քոց.
[7]վասն այսորիկ՞ լուար ձայնի աղօթից ի-
24 մոց՝ յաղաղակել իմում առ քեզ։ Սի-
րեցէք զՏէր, ամենայն սուրբք նորա,
[8]զի ստուգութիւն խնդրէ Տէր, եւ հա-
տուցանէ այնոցիկ որ առաւել՞ առնեն
25 զամբարտաւանութիւն։ Քաջալերեցա-
րուք եւ զօրասցին սիրտք ձեր, ամե-
նեքեան որք յուսացեալ էք ի Տէր։

## ՍԱՂՄՈՍ ԼԱ (ԼԲ)

Իմաստութեան Սաղմոս Դաւթի։

1 Երանի՛ ում թողութիւն եղեւ մեղաց,
եւ ծածկեցան ամենայն յանցանք նորա։
2 Երանի՛ առն՝ որում ոչ համարեսցի Տէր
զմեղս նորա, եւ ոչ գոյ նենգութիւն [9]ի
3 բերան նորա։ Լռեցի ես եւ մաշեցան
[10]ամենայն ոսկերք իմ առ աղաղակել ինձ
4 [10]առ Տէր՞ զօրհանապազ։ Ի տուէ եւ ի գի-
շերի ծանրացաւ ձեռն քո ի վերայ իմ,

[1]Եբր. Առ գլուխ երաժշտացն. [2]Եբր. իմ վէմ ամրութեան [3]Եբր. վէմ [4]Եբր. Աստուած ճշմարտութեան։ (7) Ատեցի [5]Եբր. յողորմութեան

[6]Եբր. Ժամանակք [7]Եբր. սակայն դու [8]Եբր. զհաւատարիմս պահէ Տէր, եւ հատուցանէ առատութեամբ որ [9]Եբր. յանձին [10]Յ Եբր. զօրն

[1]դարձայ ի թշուառութիւն զի հարան
5 յիս փուշք՟։ Հանգիստ։ Զմեղս իմ ցու-
ցից քեզ, եւ զանօրէնութիւնս իմ ոչ
ծածկեցից ի քէն. ասացի թէ [2]Պատմե-
ցից ինձէն զմեղս իմ՟, եւ դու թողցես
զամենայն ամպարշտութիւնս մեղաց ի-
6 մոց։ Հանգիստ։ Վասն այսորիկ յաղօթս
կացցեն առ քեզ ամենայն սուրբք ի ժամ
ընդունելի. [3]բայց միայն ի ջուրցն հեղե-
ղաց բազմաց, որ առ նոսա ինչ ոչ մեր-
7 ձեսցին՟։ Դու ես ապաւէն իմ ի նեղու-
թենէ յայսմանէ, [4]որ շուրջ եղեն զի-
նեւ. ցնծութիւն իմ. փրկեա զիս յայն-
8 ցանէ՝ որ պաշարեցին զիս՟։ Իմաստուն
արարից զքեզ եւ խելամուտ ի ճանա-
պարհ յոր եւ գնասցես, եւ հաստատեցից
9 ի վերայ քո զաչս իմ։ Մի՛ լինիք որպէս
զձիս եւ զջորիս զի ոչ գոյ ի նոսա ի-
մաստութիւն. ի սանձս եւ ի դանդանա-
ւանդս ճմլեսցես զկզակս նոցա, որ առ
10 քեզ ինչ ոչ մերձեսցին։ Բազում տան-
ջանք են մեղաւորաց, բայց որք յուսան
ի Տէր՝ ողորմութիւն Տեառն շուրջ ե-
11 ղիցի զնոքօք։ Ուրախ եղերուք եւ ցնծա-
ցէք, արդարք, ի Տէր. [5]պարծեցարուք
ամենեքեան որք ուղիղ էք սրտիւք։

## ՍԱՂՄՈՍ ԼԲ (ԼԳ)

[6]Սաղմոս Դաւթի՟։

1 Ցնծացէք, արդարք, ի Տէր. ուղղոց
2 վայելէ օրհնութիւն։ Խոստովան եղե-
րուք Տեառն [7]օրհնութեամբ, տասնա-
ղեաւ սաղմոսարանաւ սաղմոս ասացէք
3 նմա։ Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր,
[6]զի բարի է,՟ սաղմոս ասացէք նմա օրհ-
4 նութեամբ։ Ուղիղ են պատգամք Տեառն,
եւ ամենայն գործք նորա հաւատովք
5 են. Եւ սիրէ [8]զողորմութիւն եւ զիրա-
ւունս Տէր. ողորմութեամբ Տեառն լի
6 եղեւ երկիր. Եւ բանիւ Տեառն երկինք
հաստատեցան, եւ հոգւով բերանոյ նո-
7 րա ամենայն զօրութիւնք նոցա։ Ժո-
ղովեաց որպէս ի տիկ զջուրս ծովու,
8 եւ եդ [9]ի խորս զգանձս իւր՟։ Երկիցէ ի
Տեառնէ ամենայն երկիր, եւ ի նմանէ
դողասցեն ամենայն բնակիչք աշխարհի։
9 Զի նա ասաց՝ եւ եղեն, ինքն հրամայ-
եաց՝ եւ հաստատեցան։
10 Տէր ցրուէ զխորհուրդս հեթանոսաց,
անարգէ Տէր զխորհուրդս ժողովրդոց,
[6]եւ արհամարհէ Տէր զխորհուրդս իշ-
11 խանաց՟։ Խորհուրդ Տեառն յաւիտեան
մնայ, խորհուրդ սրտի նորա ազգէ մին-
12 չեւ յազգ։ Երանի՛ ազգի որոյ [10]Տէր Ա-
ստուած օգնական է նմա՟, ժողովուրդ
զոր ընտրեաց ի ժառանգութիւն իւր։
13 Յերկնից նայեցաւ Տէր յամենայն որդիս
14 մարդկան. Ի պատրաստ բնակութենէ
իւրմէ հայեցաւ յամենայն բնակիչս աշ-
15 խարհի։ Ո ստեղծ [11]առանձին զսիրտս
նոցա, ի միտ առնու զամենայն գործս
16 նոցա։ Ոչ թէ ի բազում զօրս իւր ապ-
րեսցի թագաւոր, եւ ոչ սկայ ի բազում
17 զօրութեան իւրում։ Սուտ է ձի [12]փրկու-
թեան իւրում՟, ի բազում զօրութեան
իւրում ոչ ապրեցուցանէ [6]զհեծեալն։
18 Աչք Տեառն ի վերայ երկիւղածաց
իւրոց, եւ որք յուսան յողորմութիւն
19 նորա, Փրկել ի մահուանէ զանձինս նո-
20 ցա, կերակրել զնոսա ի սովու։ Անձինք
մեր համբերեսցեն Տեառն, զի օգնա-
21 կան եւ պաշտպան մեր է։ Ի նա ուրախ
եղիցին սիրտք մեր, եւ յանուն սուրբ նորա
22 յուսացաք։ Եղիցի ողորմութիւն քո, Տէր,
ի վերայ մեր, որպէս յուսացաք ի քեզ։

## ՍԱՂՄՈՍ ԼԳ (ԼԴ)

1 Սաղմոս Դաւթի. ի ժամանակի զի այ-
լայլեաց զերեսս իւր առաջի Աբի-
մելեքայ. եւ արձակեաց զնա,
եւ գնաց։

2 Օրհնեցից զՏէր յամենայն ժամ, յամե-
նայն ժամ օրհնութիւն նորա ի բերան
3 իմ։ Ի Տէր պարծեսցի անձն իմ, լուի-
4 ցեն հեզք եւ ուրախ եղիցին։ Մեծ ա-
րարէք զՏէր ինեւ, եւ բարձր արաս-
ցուք զանուն նորա ի միասին։
5 Խնդրեցի ի Տեառնէ եւ լուաւ ինձ,
յամենայն նեղութենէ իմմէ փրկեաց զիս։
6 Մատիք առ Տէր եւ առէք լոյս, եւ
7 երեսք ձեր մի՛ ամաչեսցեն։ Այս աղքատ
կարդաց առ Տէր, եւ Տէր լուաւ սմա,
յամենայն նեղութենէ սորա փրկեաց
8 զսա։ [13]Բանակ հրեշտակաց Տեառն շուրջ

[1] Եբր. պարարտութիւն իմ դարձաւ յերաշտութիւն ամառան [2] Եբր. Խոստովան եղէց զյանցուածս իմ Տեառն [3] Եբր. արդարեւ ի յորդել ջուրց բազմաց՝ ի նա ոչ մերձեսցին [4] Եբր. յերգս փրկութեան շուրջ եղիցես զինեւ։ Հանգիստ։ [5] Եբր. գոչեցէք ուրախութեամբ [6] Յեբր. պակասէ [7] Եբր. քնարաւ [8] Եբր. զարդարութիւն [9] Եբր. զանդունդս ի շտեմարանս

[10] Եբր. Աստուած Տէր է [11] Եբր. համօրէն [12] Եբր. ի փրկութիւն [13] Եբր. Հրեշտակ Տեառն դնէ զբանակ իւր շուրջ

է՟ զերկիւղածովք իւրովք, եւ պահէ
9 զնոսա։ Ճաշակեցէք եւ տեսէք՝ զի
քաղցր է Տէր, երանեալ է այր որ յու-
10 սայ ի նա։ Երկերուք ի Տեառնէ ամե-
նայն սուրբք նորա, զի ոչ ինչ է պա-
11 կասութիւն երկիւղածաց նորա։ [1]Մե-
ծամեծք աղքատացան եւ քաղցեան,
բայց որք խնդրեն զՏէր՝ մի՛ պակասեսցէ
ի նոցանէ ամենայն բարութիւն։
12 Եկայք, որդիք իմ, եւ լուարուք ինձ,
13 եւ զերկիւղ Տեառն ուսուցից ձեզ։ Ո՞վ է
մարդ որ կամի զկեանս, սիրէ զաւուրս
14 իւր տեսանել ի բարութեան։ Լռեցո
զլեզու քո ի չարութենէ, եւ շրթունք
15 քո մի՛ խօսեսցին զնենգութիւն։ Խո-
տորեա ի չարէ եւ արա զբարի, խնդրեա
զխաղաղութիւն եւ երթ զհետ նորա։
16 Աչք Տեառն ի վերայ արդարոց, եւ
ականջք նորա ի վերայ աղօթից նոցա։
17 Երեսք Տեառն ի վերայ չարագործաց,
սատակել յերկրէ զյիշատակս նոցա։
18 Կարդացին արդարք առ Տէր՝ եւ Տէր
լուաւ նոցա, յամենայն նեղութենէ նո-
19 ցա փրկեաց զնոսա։ Մերձ է Տէր առ
այնոսիկ որ մաշեալ են սրտիւք, եւ
20 զխոնարհս հոգւով կեցուցանէ։ Բազում
նեղութիւնք են արդարոց, յամենայնէ
21 փրկէ զնոսա Տէր․ Եւ պահէ զամենայն
ոսկերս նոցա, եւ մի ի նոցանէ մի՛
22 փշրեսցի։ [2]Մահ մեղաւորի չար է՟, բայց
23 որ ատեայ զարդարն՝ [3]զղջասցի։ Փրկէ
Տէր զանձինս ծառայից իւրոց, մի՛
[4]զղջասցին ամենեքեան որք յուսացեալ
են ի նա։

## ՍԱՂՄՈՍ ԼԴ (ԼԵ)

[5]Ի կատարած․ Սաղմոս Դաւթի։

1 Դատեա, Տէր, զայնոսիկ որք դատին
զիս, մարտիր ընդ այնոսիկ որ մարտն-
2 չին ընդ իս։ Առ զզէն եւ զասպար քո,
3 եւ արի յօգնել ինձ։ Հան զսուր քո
ընդդէմ հալածչաց իմոց, արգել զնոսա.
եւ ասա դու ցանձն իմ թէ Փրկութիւն
4 քո ես եմ։ Ամաչեսցեն եւ յամօթ լիցին
որք խնդրէին զանձն իմ․ դարձցին յետս
եւ ամաչեսցեն որք խորհէին ինձ չար։
5 Եղիցին նոքա որպէս փոշի առաջի հող-
մոյ, եւ հրեշտակ Տեառն նեղեսցէ զնո-
6 սա։ Եղիցին ճանապարհք նոցա ի խա-
ւար եւ ի գայթակղութիւն, եւ հրեշ-
7 տակ Աստուծոյ հալածեսցէ զնոսա։ Ի
նանիր թաքուցին ինձ [6]որոգայթ յապա-
կանութեան իւրեանց, եւ ի նանիր նա-
8 խատեցին զանձն իմ՟։ Հասցէ ի վերայ
նոցա որոգայթ զոր ոչ գիտացին, եւ
որս զոր թաքուցին՝ առցէ զնոսա,
9 եւ յորոգայթ ի նոյն անկցին։ Այլ անձն
իմ ցնծասցէ ի Տէր, ուրախ եղիցի ի
10 փրկութեան նորա։ Եւ ամենայն ոսկերք
իմ ասասցեն, Տէր, ո՞ նման է քեզ․ զի
փրկեաց զաղքատն ի ձեռաց հզօրի, զաղ-
քատն եւ զանանկն յայնցանէ որ յա-
փշտակեն զնա։
11 Յարեան ի վերայ իմ վկայք չարեաց,
12 զոր ինչ ոչ գիտէի հարցանէին ցիս։ Հա-
տուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ,
անժառանգել զանձն [7]իմ խորհեցան յորդ-
13 ւոց ի մարդկանէ։ Ես ի նեղել՟ նոցա
քուրձ զգենուի, խոնարհ առնէի պահօք
զանձն իմ, եւ աղօթք իմ ի ծոց իմ
14 դարձցին։ Որպէս զեղբայր եւ զընկեր՝
այնպէս [8]հաճոյ լինէի, որպէս սգաւոր
եւ տրտում այնպէս խոնարհ առնէի։
15 Ի վերայ իմ՟ ուրախ եղեն եւ ժողո-
վեցան, ժողովեցան յիս տանջանք եւ
ես ոչ ծանեայ․ [9]ցրուեցան եւ ոչ զղջա-
16 ցան։ Փորձեցին զիս եւ արհամարհեցին
արհամարհանօք, կրճտեցին ի վերայ իմ
զատամունս իւրեանց։
17 Տէր, ե՞րբ տեսցես․ ի բաց արա զանձն
իմ ի խորամանկութենէ նոցա, եւ յա-
18 ռիւծուց զմիամօրութիւն իմ։ Խոստո-
վան եղէց քեզ, Տէր, յեկեղեցիս մեծս,
եւ ի ժողովս բազմաց օրհնեցից զքեզ։
19 Մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ
որք ատէին զիս ի տարապարտուց․ ակ-
20 նարկէին առնէին յիս աչօք իւրեանց։ [10]Ընդ
իս զխաղաղութիւն խօսէին, եւ ինքեանք
բարկութեամբ զնենգութիւն խորհէին՟։
21 Բացին ի վերայ իմ զբերանս իւրեանց,
եւ ասացին՝ Այո, այո, տեսին աչք մեր։
22 Տեսեր, Տէր, եւ մի՛ լռեր, Տէր, մի՛
23 ի բացեայ անկանիր յինէն։ Զարթիր եւ
հայեաց, Տէր, յիրաւունս իմ, Աստուած
իմ եւ Տէր իմ, ի դատաստանս իմ։

[1] Եբր. Կորիւնք առիւծուց [2] Եբր. Կորուսցէ զամպարիշտն չարութիւն [3] Եբր. յանցաւոր եղիցի [4] Եբր. յանցաւոր եղիցին [5] Յեբր. Դաւթի

[6] Եբր. զորոգայթ իւրեանց ի փոս․ ի նանիր փորեցին անձին իմում [7] Եբր. իմ։ (13) Ես ի հիւանդութեան [8] Եբր. զնոյն ընդ նոսա․ իբրեւ որ սգայ ի վերայ մօր, գլխս այնպէս խոնարհ ածէի (15) Ի կաղալ իմում [9] Եբր. պատառեցին [10] Եբր. Զի ոչ խօսէին զխաղաղութիւն, և ընդդէմ հանդարտելոց երկրի զնենգութիւն խորհէին։

24 Եւ իրաւ արա ինձ ըստ արդարութեան
քում, Տէր Աստուած իմ. մի՛ ուրախ
25 եղիցին յիս թշնամիք իմ. Եւ մի՛ ա-
սասցեն ի սիրտս իւրեանց թէ Վաշ վաշ
անձանց մերոց զի ընկլուզաք զնա։
26 Ամաչեսցեն եւ յամօթ լիցին որք խըն-
դային ընդ չար իմ. զգեցցին զամօթ
եւ զանարգանս որք մեծաբանէին ի վե-
27 րայ իմ։ Ցնծասցեն եւ ուրախ լիցին ի
քեզ ամենեքեան, որք կամին ընդ ար-
դարութիւն իմ. ասասցեն յամենայն
ժամ՝ [1]Մեծ է Աստուած, եւ որք կամին
28 զխաղաղութիւն ծառայի քո”։ Լեզու իմ
խօսեսցի զարդարութիւնս քո, զօրհա-
նապազ զգովութիւնս քո։

## ՍԱՂՄՈՍ ԼԵ (ԼԶ)

1 [2]Ի կատարած. ծառայի Տեառն, Սաղ-
մոս Դաւթի։

2 [3]Ասէ անօրէնն՝ ի մեղանչել ընդ միտս
իւր”. թէ Չիք երկիւղ Աստուծոյ առաջի
3 աչաց նորա։ [4]Նենգեաց առաջի նորա
գտանել զանօրէնութիւն, եւ ատել զնա”
4 Բանք բերանոյ նորա՝ անօրէնութիւն եւ
նենգութիւն են. ոչ կամեցաւ նա իմանալ
5 զբարի։ Զանօրէնութիւն խորհեցաւ յան-
կողնի իւրում. եկաց նա յամենայն ճա-
նապարհ որ ոչ է բարի, եւ ի չարէ նա
6 ոչ ձանձրացաւ։ Տէր, յերկինս է ողոր-
մութիւն քո, ճշմարտութիւն քո մին-
7 չեւ յամպս։ Արդարութիւն քո որպէս
[5]լերինք, Աստուած”, իրաւունք քո որ-
պէս խորս բազումս. զմարդիկ եւ զա-
8 նասուն կեցուցանես դու, Տէր։ Որպէս
զի՛ բազում արարեր զողորմութիւն քո,
Աստուած, այլ որդիք մարդկան ի հո-
9 վանի թեւոց քոց յուսասցին։ Արբեսցին
նոքա ի պարարտութենէ տան քո, եւ
զուղխս փափկութեան քո տացես ըմպել
10 նոցա։ Ի քէն է, Տէր, աղբեւր կե-
նաց, եւ լուսով [6]երեսաց քոց” տեսա-
11 նեմք զլոյս։ Ծագեա զողորմութիւնս քո
որք ճանաչեն զքեզ, զարդարութիւնս
12 քո որ ուղիղ են սրտիւք։ Մի՛ եկեսցէ
ի վերայ մեր ոտն ամբարտաւանից, եւ
ձեռք մեղաւորաց մի՛ դողացուսցեն զմեզ։

13 Անդ անկցին ամենեքեան որք գործեն
զանօրէնութիւն, մերժեսցին եւ այլ մի՛
կարասցեն հաստատել։

## ՍԱՂՄՈՍ ԼԶ (ԼԷ)

Սաղմոս Դաւթի։

1 Մի՛ նախանձիր ընդ չարս, մի՛ ընդ
այնոսիկ որ գործեն զանօրէնութիւն։
2 Զի որպէս խոտ վաղվաղակի ցամաքես-
ցին, որպէս զդալարի խոտոյ վաղվա-
3 ղակի անցցեն։ Յուսա ի Տէր, եւ արա
զքաղցրութիւն, բնակեա յերկրի եւ [7]հո-
4 վուեսջիր ի մեծութեան նորա։ Ժտեա
ի Տեառնէ” եւ նա տացէ քեզ զխնդրուածս
5 սրտի քո։ Յայտնեա առաջի Տեառն զճա-
նապարհս քո եւ յուսա ի նա, նա ա-
6 րասցէ. Եւ հանցէ որպէս զլոյս զարդա-
րութիւնս քո, եւ զիրաւունս քո որ-
7 պէս զօր հասարակ։ Հնազանդ լեր Տեառն
եւ ծառայեա նմա, եւ մի՛ նախանձիր
ընդ այնոսիկ որոց [8]աջողեալ իցեն ճա-
նապարհք իւրեանց, ընդ մարդոյ որ
8 գործէ զանօրէնութիւն։ Լռեա ի բար-
կութենէ եւ հանգիր ի սրտմտութենէ,
9 եւ մի՛ նախանձիր ընդ չարս։ Զի չարք
վաղվաղակի սատակեսցին, բայց որք
համբերեն Տեառն՝ նոքա ժառանգեսցեն
10 զերկիր։ Փոքր մի՛ եւ այլ ոչ եւս իցէ
ամպարիշտն, խնդրեսցես զտեղի նորա
11 եւ ոչ գտցես։ Այլ որ հեզքն են՝ նոքա
ժառանգեսցեն զերկիր, եւ փափկասցին
ի բազում խաղաղութեան իւրեանց։
12 Սպասէ մեղաւոր արդարոյ, եւ կրճտէ
13 ի վերայ նորա զատամունս իւր։ Այլ
Տէր ծիծաղեսցի զնովաւ, քանզի յառա-
ջագոյն տեսանէ, զի հասեալ է օր նո-
14 րա։ Սուր հանին մեղաւորք եւ լարեցին
զաղեղունս իւրեանց՝ հարկանել զաղ-
քատն եւ զտնանկն, սպանանել [9]զայն որ
15 խոնարհն է սրտիւ”։ Սուրք նոցա մտցեն
ի սիրտս նոցա եւ աղեղունք նոցա
փշրեսցին։
16 Լաւ է սակաւիկ ինչ արդարոյ քան
17 զբազում մեծութիւն մեղաւորաց։ Եւ
բազուկք ամպարշտաց խորտակեսցին.
18 հաստատէ Տէր զարդարս, Եւ ճանաչէ[10]
զաւուրս ամբծից. ժառանգութիւն նո-
19 ցա յաւիտեան եղիցի։ Մի՛ ամաչեսցեն

[1] Եբր. Մեծացի Տէր, որ կամի զխաղաղութիւն ծառայի իւրոյ [2] Եբր. Առ գլուխ երաժշտացն [3] Եբր. Բանք զանօրէնութենէ անզգամին ի սրտի իմում [4] Եբր. Զի ողոքէ զանձն յաչս իւր, թէ անօրէնութիւն իւր ոչ յայտնեսցի եւ եղիցի ատելի։ [5] Կամ, լերինս Հզօրս [6] Եբր. քով

[7] Եբր. Ճարակեա զճշմարտութիւն։ (4) Եւ ուրախ լեր Տերամբ [8] Եբր. յաջողեալ [9] Եբր. զայնոսիկ որոց ուղիղ են ճանապարհք [10] Եբր. [illegible] Տէր

նոքա ի ժամանակս չարութեան, այլ
20 յաւուրս սովոյ յագեսցին։ Ահա մեղա-
ւորք կորիցեն, եւ թշնամիք Տեառն [1]ի
փառաւորել եւ ի բարձրանալ իւրեանց՝
պակասեսցին որպէս ծուխ [2]զի պակա-
21 սէ՝։ Փոխ առնու մեղաւորն եւ ոչ հա-
տուցանէ, այլ որ արդարն է ողորմի եւ
22 տայ։ [3]Ոյք օրհնեն զՏէր՝ ժառանգեսցեն
զերկիր, եւ ոյք անիծանեն՝ սատակես-
ցին ի նմանէ։՝
23 Ի Տեառնէ ուղղին գնացք առն, զճա-
24 նապարհս նորա նա կամի յոյժ։ Թէպէտ
եւ գայթագղեսցի, նա մի՛ կործանեսցի,
25 զի Տէր ձեռնկալու է նորա։ Մանուկ
էի ես եւ ծերացայ, եւ ոչ տեսի զարդարն
արհամարհեալ, եւ ոչ զզաւակ նորա թէ
26 մուրանայ հաց։ Զօրհանապազ ողորմի
եւ տայ փոխ, զաւակ նորա օրհնեալ ե-
ղիցի [2]յաւիտեան։
27 Խոտորեա ի չարէ եւ արա զբարի.
բնակեսցես յաւիտեանս յաւիտենից [2]ի
28 նմա։ Տէր սիրէ զիրաւունս, եւ ոչ ընդ
վայր հարկանէ զսուրբս իւր, այլ յա-
ւիտեան պահէ զնոսա. [2]անօրէնք հա-
լածեսցին ի միասին,՝ եւ զաւակ ամ-
29 պարշտաց սատակեսցի։ Այլ արդարք
ժառանգեսցեն զերկիր, եւ բնակեսցեն
յաւիտեանս յաւիտենից ի նմա։
30 Բերան արդարոյ խօսի զիմաստու-
թիւն, եւ լեզու նորա խօսեսցի զիրա-
31 ւունս։ Օրէնք Աստուծոյ իւրոյ են ի սրտի
իւրում, եւ մի՛ գայթակղեսցին գնացք
32 նորա։ Հայի մեղաւորն ընդ արդար եւ
33 խնդրէ սպանանել զնա. Այլ Տէր ոչ թո-
ղու զնա ի ձեռս նորա, եւ ոչ դատա-
34 պարտէ զնա՝ յորժամ դատի զնա։ Համ-
բեր Տեառն եւ պահեա զճանապարհս
նորա, եւ բարձր արասցէ զքեզ ի ժա-
ռանգել զերկիր, եւ զսատակումն մե-
ղաւորաց տեսցես.
35 Տեսի զամպարիշտն վերացեալ բարձ-
36 րացեալ որպէս [4]զմայրս Լիբանանու՝։ Ան-
ցի՝ եւ ահա ոչ էր, խնդրեցի՝ եւ ոչ գտաւ
37 տեղի նորա։ [5]Պահեա զանբծութիւն, եւ
տես զուղղութիւն. զի գոն մնացուածք
38 առն խաղաղարարի՝։ Անօրէնք հալածեսս-
ցին ի միասին, եւ զաւակ ամպարշտաց

[1] Եբր. իբրեւ զճարպ գառանց սպառեսցին. [2] Յեբր. պակասէ [3] Եբր. Բանզի օրհնեալք նորա ժառանգեսցեն զերկիր, եւ անիծեալք նորա սատակեսցին։ [4] Եբր. ծառ դալար ի տեղւոջ իւրում [5] Եբր. Նկատեա զանբիծն, և հայեաց յուղիղն, զի վախճան առնն՝ խաղաղութիւն է

39 կորիցէ։ Փրկութիւն արդարոց ի Տեառնէ
է, վերակացու է նոցա ի ժամանակս
40 նեղութեան։ Օգնեսցէ նոցա Տէր եւ
փրկեսցէ զնոսա. ապրեցուսցէ ի մեղա-
ւորաց եւ կեցուսցէ զնոսա, զի յուսա-
ցան ի նա։

## ՍԱՂՄՈՍ ԼԵ (ԼԸ)

1 Սաղմոս Դաւթի. առ ի յիշատակ [2]շա-
բաթու։

2 Տէր, մի՛ սրտմտութեամբ քով յանդի-
մաներ զիս, եւ մի՛ բարկութեամբ քով
3 խրատեր զիս։ Զի նետք քո հարան յիս,
4 եւ յիս հաստատեցաւ ձեռն քո։ Ոչ գոյ
բժշկութիւն մարմնոյ իմոյ յերեսաց բար-
կութեան քո. ոչ է խաղաղութիւն ոս-
5 կերաց իմոց յերեսաց մեղաց իմոց։ Ա-
նօրէնութիւնք իմ բարձրացան քան
զգլուխ իմ, որպէս բեռն ծանր ծանրա-
6 ցան ի վերայ իմ։ Նեխեցան եւ փտե-
ցան վէրք իմ յերեսաց անզգամութեան
7 իմոյ։ Տառապեցայ եւ խոնարհեցայ յոյժ,
8 զօրհանապազ տրտում գնայի. Զի անձն
իմ լի եղեւ չարչարանօք, եւ ոչ գոյ
9 բժշկութիւն մարմնոյ իմոյ։ Չարչարե-
ցայ եւ խոնարհեցայ մինչեւ յոյժ, մռնչէի
առ հեծութեան սրտի իմոյ։
10 Տէր, առաջի քո է ամենայն ցանկու-
թիւն իմ, եւ հեծութիւն իմ ի քէն ոչ
11 ծածկեցաւ։ Սիրտ իմ խռովեցաւ յիս
եւ եթող զիս զօրութիւն իմ, լոյս աչաց
12 իմոց՝ եւ այս ոչ եղեւ ընդ իս։ Բարե-
կամք իմ եւ մերձաւորք իմ [6]առաջի իմ
մերձեցան եւ՝ կացին, եւ մերձաւորք
13 իմ հեռի եղեն յինէն. [7]Բռնադատէին
զիս եւ՝ խնդրէին զանձն իմ. ոյք խնդ-
րէին չար ի վերայ իմ՝ խօսեցան զա-
նօրէնութիւն, եւ զնենգութիւն զօրհա-
14 նապազ խորհեցան։ Այլ ես որպէս խուլ՝
զի ոչ լսէ, որպէս համր՝ որ ոչ բանայ
15 զբերան իւր։ Եղէ ես որպէս մարդ՝ որ
ոչ լսէ, եւ ոչ գոն խօսք ի բերան նորա։
16 Ես ի քեզ, Տէր, յուսացայ, եւ դու
17 լուիցես ինձ, Տէր Աստուած իմ։ Ասացի
թէ Մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք
իմ, ի սասանել ոտից իմոց՝ ի վերայ իմ
18 մեծամեծս խօսեցան։ Ես [8]ի տանջանս
պատրաստ եմ, եւ ցաւք իմ առաջի իմ
19 են յամենայն ժամ։ Զանօրէնութիւնս
իմ պատմեցից, եւ հոգացայց վասն մե-

[6] Եբր. յերեսաց տառապանաց իմոց ի բաց [7] Եբր. Եւ որոգայթս լարէին որք [8] Եբր. ի գայթել

20 զայց իմոց։ Իսկ արդ թշնամիք իմ կեն-
դանի են, եւ զօրացեալ են քան զիս.
եւ բազումք էին ոյք ատէին զիս ի տա-
21 րապարտուց։ Ոյք հատուցին ինձ չար
փոխանակ ընդ բարւոյ. չարախօսէին
զինէն, զի ես երթայի զհետ արդարու-
22 թեան։ Մի՛ թողուր զիս, Տէր, Աս-
տուած իմ, եւ մի՛ ի բացեայ առներ
յինէն, հայեաց յօգնել ինձ, Տէր փրկու-
թեան իմոյ։

## ՍԱՂՄՈՍ ԼԸ (ԼԹ)

1 [1]Ի կատարած, Իդիթումայ". Սաղմոս
Դաւթի։

2 Ասացի թէ Պահեցից զճանապարհս իմ,
զի մի՛ մեղայց լեզուաւ իմով. եդի պա-
հապան բերանոյ իմոյ՝ ի հակառակել
3 մեղաւորին առաջի իմ։ Խուլ եղէ [2]եւ
խոնարհեցայ", լռեցի ի բարութենէ եւ
4 ցաւք իմ նորոգեցան յիս։ Ջեռաւ սիրտ
իմ ի փորի իմում, եւ ի խորհուրդս իմ
5 վառեցաւ հուր։ Խօսեցայ լեզուաւ իմով
եւ ասացի,
Ցոյց ինձ, Տէր, զկատարած իմ եւ
զթիւ աւուրց իմոց քանի՞ն է, զի գի-
տացից թէ ո՞րչափ ինչ պակասեալ է
6 յինէն։ Ահա [3]չափով եդիր զաւուրս իմ,
եւ կայր զօրութեան իմոյ որպէս ոչ ինչ է
առաջի [4]իմ. սակայն ամենեւին ընդու-
7 նայն է ամենայն մարդ մսեղի" Ապա-
քէն որպէս ի պատկերի շրջի մարդ,
սակայն ի զուր խռովի, գանձէ եւ ոչ
գիտէ ում ժողովէ։
8 Իսկ արդ՝ ո՞վ է համբերութիւն իմ՝
թէ ոչ դու, Տէր, [5]կամ կայր զօրու-
9 թեան իմոյ՝ թէ ոչ ի քէն" Յամենայն
անօրէնութենէ իմմէ [6]փրկեսցես զիս,
եւ նախատինս անզգամաց [7]արարեր զիս։
10 Լուռ եղէ եւ ոչ բացի զբերան իմ, զի
11 դու արարեր։ Ի բաց արա յինէն զհան-
ջանս իմ, զի ի զօրութենէ ձեռին քո
12 ես պակասեցայ։ Կշտամբութեամբ վասն
մեղաց խրատեցեր զմարդ, մաշեցեր որ-
պէս [8]սարդիոստայն զանձն" նորա. սա-
կայն ընդունայն է ամենայն մարդ։ Հան-
13 գիստ։ Լուր, Տէր, աղօթից իմոց,
ունկն դիր խնդրուածաց իմոց. արտաս-
ուաց իմոց մի՛ լռեր. պանդուխտ եմ
ես առաջի քո, նժդեհ եւ անցաւոր որ-
14 պէս ամենայն հարք իմ։ Թո՛ղ արա ինձ
զի հանգեայց մինչչեւ երթեալ իցեմ,
ուստի ոչ եւս դառնիցիմ։

## ՍԱՂՄՈՍ ԼԹ (Խ)

1 [9]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

2 Համբերելով համբերի Տեառն, եւ նա-
յեցաւ առ իս, եւ լուաւ աղօթից իմոց։
3 Եհան զիս ի գբոյ տառապանաց, ի կա-
ւոյ եւ ի տղմոյ. հաստատեաց ի վերայ
վիմի զոտս իմ, եւ ուղղեաց զգնացս
4 իմ։ Արկ ի բերան իմ օրհնութիւն նոր,
զօրհնութիւն [5]Տեառն Աստուծոյ մերոյ։
5 Տեսցեն բազումք եւ երկիցեն եւ յու-
սասցին ի Տէր. երանեալ է այր [10]որոյ
անուն Տեառն յոյս է նորա". ոչ հայե-
ցաւ նա ի նանրութիւն, եւ ոչ ի մո-
լութիւն սուտ։
6 Բազում արարեր դու, Տէր Աստուած
իմ, զսքանչելիս քո, եւ [11]խորհրդոց քոց ոչ
ոք է որ նմանի քեզ. պատմեցի եւ խօ-
սեցայ՝ եւ բազում եղեն" քան զթիւ։
7 Ընդ զոհս եւ ընդ պատարագս ոչ հա-
ճեցար, լսելիս հաստատեցեր ինձ. զող-
ջակէզս եւ զվասն մեղացն ոչ խնդրե-
8 ցեր։ Յայնժամ ասացի թէ Ահաւասիկ
գամ ես, ի գլուխս գրոց գրեալ է վասն
9 իմ, Առնել զկամս քո, Աստուած իմ,
կամեցայ, եւ զօրէնս քո ի մէջ որո-
10 վայնի իմոյ։ Աւետարանեցից զարդա-
րութիւնս քո յեկեղեցիս մեծի. ահա
զշրթունս իմ ոչ արգելից ի քէն. Տէր,
11 դու գիտացեր։ Զի զարդարութիւնս քո
ոչ ծածկեցի ի սրտի իմում, զճշմար-
տութիւն քո եւ զփրկութիւն քո. ա-
սացի եւ ոչ թաքուցի զողորմութիւնս
քո, եւ ճշմարտութիւնս քո ի ժողո-
12 վրդենէ մեծէ։ Այլ դու, Տէր, մի՛
հեռի առներ զգթութիւնս քո յինէն. զի
ողորմութիւն քո եւ ճշմարտութիւն քո
13 յամենայն ժամ ընկալցի զիս։ Շուրջ
եղեն զինեւ չարք որոց ոչ էր նոցա
թիւ, հասին ինձ անօրէնութիւնք իմ,
եւ ես ոչ կարացի տեսանել. բազում
եղեն քան զհեր գլխոյ իմոյ, եւ սիրտ
14 իմ եթող զիս։ Կամեաց, Տէր, փրկել զիս,
15 եւ, Տէր, յօգնել ինձ նայեաց։ Ամա-

[1]Եբր. Առ գլուխ երաժշտացն՝ Իդիթունի [2]Եբր. լռութեամբ [3]Եբր. թզաւ [4]Եբր. բռ. արդարեւ ամենայն մարդ ընդունայն է ի հաստատութեան իւրում։ Հանգիստ։ [5]Յեբր. դոյլով է [6]Եբր. փրկեա [7]Եբր. մի՛ առներ [8]Եբր. ցեց զցանկալիս

[9]Եբր. Առ գլուխ երաժշտացն [10]Եբր. որ եդ զյոյս իւր ի Տէր [11]Եբր. զխորհուրդս քո որ առ մեզ՝ չէ հնար կարգել առաջի քո. պատմէի եւ խօսէի, սակայն բազում են

չնացին եւ յամօթ լիցին որք խնդրէին
զանձն իմ բառնալ զնա. դարձցին յետս
եւ ամաչեսցեն որ խնդրէին ինձ չար։
16 Կրեսցեն զամօթ առ ժամայն փոխա-
17 նակի, որ ասէին ինձ վաշ վաշ։ Ցնծաս-
ցեն եւ ուրախ լիցին ի քեզ, ամենեք-
եան որ խնդրեն զքեզ, Տէր. ասասցեն
յամենայն ժամ՝ [1]Մեծ է Աստուած", եւ
18 որք սիրեն զփրկութիւն քո։ Ես աղքատ
եւ տնանկ եմ, Աստուած, խորհեա զիս.
օգնական եւ պաշտպան իմ ես, եւ դու,
Աստուած իմ, մի՛ յամենար։

## ՍԱՂՄՈՍ Խ (ԽԱ)

1 [2]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

2 Երանի՛ որ խորհի զաղքատն եւ զտը-
նանկն, յաւուր չարի փրկէ զնա Տէր։
3 Տէր փրկէ զնա եւ կեցուսցէ, երանելի
արասցէ զնա ի վերայ երկրի, եւ ոչ մատնէ
4 զնա ի ձեռս թշնամեաց իւրոց։ Տէր
օգնական է նմա ի մահճս ցաւոց իւ-
րոց, զամենայն անկողինս նորա դար-
ձուցանէ ի հիւանդութենէ նորա։

5 Ես ասացի, Տէր, ողորմեա ինձ,
բժշկեա զանձն իմ, ես մեղայ քեզ։
6 Թշնամիք իմ ասացին ինձ չար, Ե՞րբ
լիցէ զի մեռցի եւ կորիցէ անուն նորա։
7 Մտանէր տեսանել զնանրութիւն, խօսէր
ի սրտի իւրում, եւ ժողովէր զանօրէնու-
թիւնս յանձն իւր. արտաքս ելանէր եւ
8 զնոյն խօսէր։ Զինէն շշնջէին ամենայն
թշնամիք իմ. խորհեցան չար ի վերայ իմ.
9 Բան անօրէնութեան [3]եդին ի վերայ իմ.
միթէ որ ննջիցէն՝ այլ ո՞չ" եւս յաւե-
10 լուցու յառնել։ Քանզի եւ այրն խաղա-
ղութեան իմոյ յոր եւ ես յուսացայ.
որ ուտէր զհաց իմ՝ յաճախեաց առնել
ինձ խարէութիւն։
11 Այլ դու, Տէր, ողորմեա ինձ, կանգ-
12 նեա զիս, եւ հատուցից նոցա։ Յայսմ
ծանեայց թէ հաճեցար ընդ իս, զի մի՛
13 ուրախ եղիցին յիս թշնամիք իմ։ Այլ
զիս յամբծութեան իմում ընկալար, եւ
հաստատեցեր զիս առաջի քո յաւիտեան։
14 Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի յա-
ւիտեանս յաւիտենից։ Եղիցի, եղիցի։

---

## ՍԱՂՄՈՍ ԽԱ (ԽԲ)

1 [2]Ի կատարած. իմաստութիւն որդւոցն
Կորխայ։

2 Որպէս փափաքէ եղջերու յաղբերս ջուրց,
այնպէս փափաքէ անձն իմ առ քեզ,
3 Աստուած։ Ծարաւի է անձն իմ առ
[4]քեզ, Աստուած հզօր եւ" կենդանի.
ե՞րբ եկից երեւեցայց երեսացդ Աստու-
4 ծոյ։ Եղեն ինձ արտասուք իմ կերա-
կուր ի տուէ եւ ի գիշերի, եւ այն զի
ասէին ցիս զօրհանապազ՝ թէ Ո՞ւր է
5 Աստուած քո։ Զայս որպէս յիշէի՝ տա-
ռապէր յիս անձն իմ. [5]քաջալերէի զի
մտից ընդ յարկաւ սքանչելեաց տանն"
Աստուծոյ. ի ձայն ցնծութեան խոստո-
վանութեան, եւ ի ձայն բարեկենդա-
նութեան։
6 Արդ ընդէ՞ր տրտում ես, անձն իմ,
կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ
Աստուած, [6]խոստովանեա նմա, փրկիչ
երեսաց իմոց Աստուած է։
7 Անձն իմ յիս խռովեցաւ", վասն այ-
սորիկ յիշեցի զքեզ յերկրէն Յորդանա-
8 նու, ի Հերմոնէ, ի լեռնէ Փոքունէ։ Անդ
ի խորոց կարդացին առ քեզ, ի ձայն
սահանաց քոց. ամենայն զբօսանք քո
9 եւ ալիք քո անցին ի վերայ իմ։ Ի
տուէ պատուիրեաց Տէր զողորմութիւն
իւր, գիշերի զօրհնութիւն նոր. եւ ա-
ղօթք իմ առ Աստուած վասն կենաց իմոց։
10 Ասացի Աստուծոյ՝ [7]Ընդունելի իմ ես.
ընդէ՞ր մերժեցեր զիս, ընդէ՞ր տրտում
11 գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ։ Ի
փշրել ոսկերաց իմոց նախատեցին զիս
թշնամիք իմ, յասել ցիս զօրհանապազ
12 թէ Ո՞ւր է Աստուած քո։ Արդ ընդէ՞ր
տրտում ես, անձն իմ, կամ ընդէ՞ր
խռովես զիս. յուսա առ Աստուած, [8]խոս-
տովանեա նմա", փրկիչ երեսաց իմոց
Աստուած է։

## ՍԱՂՄՈՍ ԽԲ (ԽԳ)

[9]Սաղմոս Դաւթի"

1 Դատ արա ինձ, Աստուած, եւ իրա-
ւ արա ինձ ի դատաստանի իմում. յազգէ,

---

[1] Եբր. Մեծասցի Տէր [2] Եբր. Առ գլուխ երաժշտացն
[3] Եբր. Հեղաւ ի նա, եւ որ ննջէն՝ ոչ [4] Եբր. Աստուած, առ Աստուած [5] Եբր. որպէս երթայի ընդ բազմութեան, գնայի ընդ նոսա մինչեւ ի տունն [6] Եբր. զի միւսանգամ խոստովան եղէց նմա, ի փրկութիւն երեսաց նորա։
(7) Աստուած իմ, խռովեցաւ յիս անձն իմ [7] Եբր. Վէմ [8] Եբր. զի միւսանգամ խոստովան եղէց առ նա [9] Յեբր. պ–կ–ս–է

որ ոչ է սուրբ, ի մարդոյ մեղաւորէ
2 նենգաւորէ փրկեա զիս։ Դու, Աստուած,
հզօրիչ իմ ես, ընդէ՞ր մոռացար զիս,
ընդէ՞ր տրտում գնամ ես ի նեղել թըշ-
3 նամւոյ իմոյ։ Առաքեա, Տէր, զլոյս քո
եւ զճշմարտութիւն քո, զի առաջնոր-
դեսցեն ինձ, եւ հանցեն զիս ի լեառն սուրբ
4 եւ ի յարկս քո։ Մտից առաջի սեղա-
նոյ Աստուծոյ, առ Աստուած [1]որ ու-
րախ առնէ զմանկութիւն իմ" խոստո-
վան եղէց քեզ օրհնութեամբ, Աստուած,
Աստուած իմ։
5 Արդ ընդէ՞ր տրտում ես, անձն իմ,
կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ
Աստուած, [2]խոստովանեա նմա", փրկիչ
երեսաց իմոց Աստուած է։

## ՍԱՂՄՈՍ ԽԳ (ԽԴ)

1 [3]Ի կատարած. իմաստութիւն որդւոցն
Կորխայ. [4]Սաղմոս Դաւթի։"

2 Աստուած, ականջօք մերովք լուաք,
զոր հարքն մեր պատմեցին մեզ. զգործն
զոր գործեցեր յաւուրս նոցա, յաւուրսն
3 առաջինս։ Ձեռն քո խլեաց զհեթա-
նոսս, եւ զնոսա անկեցեր. չարչարեցեր
4 զժողովուրդս եւ հաներ զնոսա։ Զի ոչ թէ
սրով իւրեանց ժառանգեցին զերկիր,
եւ ոչ բազուկ նոցա փրկեաց զնոսա.
այլ աջ քո եւ բազուկ քո եւ լոյս երե-
սաց քոց, զի հաճեցար դու ընդ նոսա։
5 Դու ինքն ես Թագաւոր իմ եւ Աս-
տուած իմ, որ հրամայեցեր զփրկութիւնս
6 Յակոբայ։ Քեւ զթշնամիս մեր հարցուք,
եւ անուամբ քով արհամարհեսցուք
7 զյարուցեալսն ի վերայ մեր։ Ոչ թէ
յաղեղն իմ յուսացեալ եմ, եւ ոչ սուր
8 իմ կեցուցանէ զիս. Այլ դու փրկեցեր
զմեզ ի թշնամեաց մերոց, եւ զատելիս
9 մեր յամօթ արարեր։ Աստուծով պար-
ծեսցուք զօրհանապազ, եւ անուան նո-
րա խոստովան եղիցուք յաւիտեան։[5]
10 Բայց արդ մերժեցեր եւ անարգեցեր
զմեզ, եւ ոչ ելեր, Աստուած, ընդ զօրս
11 մեր։ Դարձուցեր զմեզ յետս քան զթըշ-
նամիս մեր, եւ ատելիք մեր յափշտա-
12 կեցին զմեզ։ Ետուր զմեզ որպէս զոչ-
խար ի զենումն, եւ ընդ հեթանոսս
13 ցրուեցեր զմեզ։ Վաճառեցեր զժողո-
վուրդս քո առանց գնոյ, եւ ոչ [6]գոյ
14 թիւ ագապոյի մերոյ"։ Արարեր զմեզ
նախատինս դրացեաց մերոց, ծաղր եւ
այպն կատականաց այնոցիկ որ շուրջ
15 էին զմեւք։ Արարեր զմեզ յառակս հե-
թանոսաց, ի շարժել զգլուխս ժողովըր-
16 դոց։ Զօր ամենայն նախատինք իմ ա-
ռաջի իմ են, եւ ամօթ երեսաց իմոց
17 ծածկեաց զիս։ Ի ձայնէ նախատողին
եւ չարախօսի, յերեսաց թշնամւոյն եւ
հալածչի։
18 Այս ամենայն եկն ի վերայ մեր, եւ
մեք զքեզ ոչ մոռացաք եւ ոչ ստեցաք
19 ուխտի քում, Եւ ոչ դարձաք յետս
սրտիւք մերովք. [7]դու դարձուցեր զշա-
20 ւիղս" մեր ի ճանապարհաց քոց. Խո-
նարհ արարեր զմեզ [8]ի տեղի չարչարա-
նաց", եւ ծածկեցին զմեզ ստուերք
մահու։
21 Թէ մոռացեալ իցէ մեր զանուն Աս-
տուծոյ մերոյ, կամ ձգեալ իցէ զձեռս
22 մեր յաստուածս օտարս, Սակայն Աս-
տուած [9]խնդրէ զայս, զի Նա քննէ
23 զգաղտնիս սրտից մերոց։ Վասն քո մե-
ռանիմք զօրհանապազ, համարեցաք
որպէս զոչխար ի զենումն։
24 Զարթիր, ընդէ՞ր ննջես, Տէր. արի
25 եւ մի՛ մերժեր զմեզ ի սպառ։ Զմէ՞
դարձուցանես զերեսս քո ի մէնջ, մո-
ռանաս զաղքատութիւն եւ զնեղու-
26 թիւնս մեր։ Խոնարհ եղեն մինչեւ ի
հող անձինք մեր, եւ յերկիր կցեցան
27 մէջք մեր։ Արի, Տէր, օգնեա մեզ, եւ
փրկեա զմեզ վասն [10]անուան քո։

## ՍԱՂՄՈՍ ԽԴ (ԽԵ)

1 [11]Ի կատարած. վասանցելոց ժամանա-
կաց, որդւոցն Կորխայ իմաստութիւն.
Սաղմոս օրհնութեան վասն սիրելոյն"

2 Բղխեաց սիրտ իմ զպատգամս քո բարիս,
եւ ասեմ զգործս իմ Թագաւորի. լեզու
3 իմ որպէս գրիչ արագագիր դպրի։ Գե-
ղեցիկ տեսանելով քան զամենայն որդ-
ւոց մարդկան. սփռեցան շնորհք ի շըր-

[1] Եբր. ուրախութեան ցնծութեան իմոյ [2] Եբր. զի միւսանգամ խոստովան եղէց առ նա [3] Եբր. Առ գլուխ երաժշտացն [4] Յեբր. [illegible] [5] Եբրայեցին յաւելու, Հանգիստ։

[6] Եբր. մեծացար գնովք նոցա [7] Եբր. եւ ոչ խոտորեցան ոտք [8] Եբր. ի տեղւոջ վիշապաց [9] Եբր. ո՞չ խնդրեսցէ [10] Եբր. ողորմութեան [11] Եբր. Առ գլուխ երաժշտացն. ի վերայ Շոշաննիմի. իմաստութիւն որդւոցն Կորխայ, երգ սիրոյ։

*թանց քոց, վասն այսորիկ օրհնեաց*
*զքեզ Աստուած յաւիտեան։*
4 *Ած զսուր ընդ մէջ քո, Հզօր, վայել-*
5 *չութեան եւ գեղոյ քո։ Լարեա, ուղղեա*
*եւ թագաւորեա վասն ճշմարտութեան,*
*հեզութեան եւ արդարութեան, եւ ա-*
*ռաջնորդեսցէ քեզ սքանչելապէս աջ քո։*
6 *Նետք քո սրեալ են, Հզօր, եւ ժողո-*
*վուրդք ի ներքոյ քո անկցին, ի սիրտս*
*թշնամեաց թագաւորի։*
7 *Աթոռ քո, Աստուած, յաւիտեանս*
*յաւիտենից, գաւազան ուղղութեան գա-*
8 *ւազան արքայութեան քո։ Սիրեցեր*
*զարդարութիւն, եւ ատեցեր զանօրէ-*
*նութիւն. վասն այսորիկ օծ զքեզ, Աս-*
*տուած, Աստուած քո իւղով ուրախու-*
9 *թեան առաւել քան զընկերս քո։ Զմուռս*
*եւ զստաշխն եւ կասիա ի զգեստէ քումմէ,*
*ի տաճարաց փղոսկրէից, ուստի ուրախ*
10 *արարին զքեզ։ Դստերք թագաւորաց ի*
*պատիւ. կացցէ դշխոյ ընդ աջմէ քումմէ,*
*ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ եւ*
11 *պաճուճեալ։ Լուր, դուստր, եւ տես,*
*խոնարհեցո զունկն քո. մոռա զժողո-*
12 *վուրդ քո եւ զտուն հօր քո. Զի ցան-*
*կացաւ թագաւոր գեղոյ քո. սա ինքն*
13 *է Տէր քո, երկիր պագցես նմա։ Եւ*
*դուստր Տիւրայ [1]երկիր պագցէ նմա. եւ*
*պատարագօք զերեսս սորա՞ պաղատեսցեն*
*մեծամեծք ժողովրդոց։*
14 *Ամենայն փառք դստեր թագաւորի ի*
15 *ներքոյ. ի վերջաւորս ոսկեհուռս զար-*
*դարեալ եւ [2]պաճուճեալ. տարցին թա-*
*գաւորի կուսանք զհետ նորա, եւ զըն-*
16 *կերս նորա տարցին նմա՞։ Ածցին ցնծու-*
*թեամբ եւ ուրախութեամբ եւ տարցին*
17 *ի տաճար թագաւորի։ Եւ փոխանակ*
*հարց քոց եղիցին որդիք քո. կացուս-*
*ցես զնոսա իշխանս ընդ ամենայն երկիր։*
18 *Յիշեսցի անուն քո ընդ ամենայն ազգս*
*ազգաց. վասն այսորիկ ժողովուրդք*
*խոստովան եղիցին առ քեզ, յաւիտեան*
*եւ յաւիտեանս յաւիտենից։*

## ՍԱՂՄՈՍ ԽԶ (ԽԵ)

1 *[3]Ի կատարած. որդւոցն Կորխայ ի վե-*
*րայ գաղտնեաց։՝*

2 **Ա***ստուած մեր ապաւէն եւ զօրութիւն,*
*օգնական [4]ի վերայ նեղութեանց որ գտին*
3 *զմեզ յոյժ՞։ Վասն այսորիկ ոչ երկիցուք*
*մեք ի խռովել երկրի, ի փոփոխել լե-*
4 *րանց ի սիրտս ծովու։ Գոչեցին եւ խռո-*
*վեցան ջուրք նոցա, խռովեցան լերինք*
5 *ի զօրութենէ նորա։[5] Գնացք գետոց*
*ուրախ առնեն զքաղաքն Աստուծոյ, [6]եւ*
*սուրբ արար զյարկս իւր Բարձրեալն՞։*
6 *Աստուած ի մէջ նորա եւ նա մի*
*սասանեսցի, օգնեսցէ նմա Աստուած*
*ի վաղորդայնէ մինչ ի վաղորդայն։*
7 *Խռովեցան հեթանոսք, եւ խոնարհ եղեն*
*թագաւորութիւնք. ետ զձայն իւր*
8 *Բարձրեալն՝ եւ խռովեցաւ երկիր։ Տէր*
*զօրութեանց ընդ մեզ, [7]ընդունելի է*
9 *մեր Աստուած Յակոբայ։[5] Եկայք եւ*
*տեսէք զգործս [8]Աստուծոյ, որ արար*
*զնշանս եւ զարուեստս ի վերայ երկրի։*
10 *Եհար զպատերազմ ի ծագաց մինչ ի*
*ծագս երկրի. զաղեղունս փշրեաց,*
*զզէնս խորտակեաց եւ զասպարս այր-*
11 *եաց հրով։ Կանխեցէք եւ ծանիջիք զի*
*ես եմ Աստուած. բարձր եղէց ի հեթա-*
*նոսս, եւ բարձրացայց ի վերայ երկրի։*
12 *Տէր զօրութեանց ընդ մեզ, [7]ընդունելի*
*է մեր Աստուած Յակոբայ։[5]*

## ՍԱՂՄՈՍ ԽԷ (ԽԶ)

1 *[9]Ի կատարած. վասն որդւոցն Կորխայ.*
*Սաղմոս Դաւթի՞*

2 **Ծ***ափս հարէք, ամենայն հեթանոսք,*
*աղաղակեցէք առ Աստուած ի ձայն*
3 *ցնծութեան։ Տէր բարձրեալ եւ ահար-*
*կու, Թագաւոր մեծ ի վերայ ամենայն*
4 *երկրի։ Հնազանդ արար զժողովուրդս*
*ընդ մեզ, եւ զհեթանոսս ի ներքոյ ոտից*
5 *մերոց։ Ընտրեաց [10]զմեզ իւր ի ժառան-*
*գութիւն, զգեղեցկութեանցն՞ Յակո-*
6 *բայ զոր եւ սիրեաց։[5] Համբարձաւ Աս-*
*տուած օրհնութեամբ, եւ Տէր մեր*
7 *ձայնիւ փողոյ։ Սաղմոս ասացէք [11]Աս-*
*տուծոյ մերում՞, սաղմոս ասացէք*
*Թագաւորին մերում, սաղմոս ասացէք։*
8 *Թագաւոր [12]մեծ ի վերայ ամենայն երկրի*
*Աստուած է, սաղմոս ասացէք նմա ի-*
9 *մաստութեամբ։ Թագաւորեաց Աստուած*

[1] Եբր. [illegible] պատարագօք, զերեսս քո [2] Եբր. պաճուճեալ տարցի թագաւորի. կուսանք, ընկերք նորա տարցին քեզ [3] Եբր. Առ գլուխ երաժշտացն. որդւոցն Կորխայ ի վերայ Ալամովթայ երգ։

[4] Եբր. յոյժ գտանի ի նեղութիւնս [5] Եբր.—Սելա—, Հանգիստ։ [6] Եբր. բնակութիւն սրբութեան Բարձրելոյն [7] Եբր. ապաւէն [8] Եբր. Տեառն [9] Եբր. Առ գլուխ երաժշտացն. որդւոցն Կորխայ Սաղմոս։ [10] Եբր. մեզ զժառանգութիւն մեր, զփառաւորութիւն [11] Եբր. Աստուծոյ, սաղմոս ասացէք [12] Եբր. [illegible]

*ի վերայ հեթանոսաց, Աստուած նստաւ*
10 *յաթոռ սրբութեան իւրոյ։ Իշխանք ժո-*
*ղովրդոց ժողովեցան առ Աստուած*
*Աբրահամու, [1]զի Աստուծոյ զօրութիւնք*
*յերկրէ յոյժ համբարձան։՝՝*

## ՍԱՂՄՈՍ ԽԷ (ԽԸ)

1 *[2]Սաղմոս օրհնութեան որդւոցն Կորխայ.*
*երկրորդ շաբաթու։՝՝*

2 **Մ***եծ է Տէր եւ օրհնեալ է յոյժ՝ ի քա-*
*ղաք Աստուծոյ մերոյ, ի լեառն սուրբ*
3 *նորա։ [3]Հաստատմամբ ցնծացէ ցնծու-*
*թեամբ ամենայն երկիր, լերինք Սիոնի,*
*կողմանք՝՝ հիւսիսոյ, քաղաք Թագաւորի*
4 *մեծի։ [4]Աստուած ի տաճարի իւրում*
*յայտնի, ի ժամանակի որպէս օգնական*
5 *լինէր նոցա։՝՝ Ահաւասիկ թագաւորու-*
*թիւնք երկրի ժողովեցան, եւ անցին ի*
6 *միասին։ Նոքեանք տեսին այսպէս եւ*
*զարմացան, խռովեցան, սասանեցան։*
7 *Եւ զդողումն կալաւ զնոսա անդ. երկունք*
8 *որպէս ի ծննդկանի։ Ի հողմ [5]սաստիկ*
9 *փշրեսցես զնաւս ի Թարսիս՝՝։ Որպէս*
*լուաք՝ այնպէս եւ տեսաք, ի քաղաք*
*Տեառն զօրութեանց՝ ի քաղաք Աստու-*
*ծոյ մերոյ. Աստուած հիմնեաց զդա*
10 *յաւիտեան։[6] Ընկալաք, Աստուած, զո-*
*ղորմութիւն քո ի մէջ [7]ժողովրդեան*
11 *քո։ Ըստ անուան քում, Աստուած,*
*այնպէս եւ օրհնութիւն քո ընդ ամե-*
*նայն տիեզերս, եւ արդարութեամբ լի*
12 *է աջ քո։ Ուրախ եղիցի լեառն Սիոն,*
*եւ ցնծասցեն դստերք Յուդայ, վասն*
*իրաւանց քոց, Տէր։*
13 *Շրջեցարուք զՍիովնիւ, պաշարեցէք*
*զնա, եւ [8]պատմեցէք զաշտարակս նորա։*
14 *Դիք զսիրտ ձեր ի վերայ զօրութեանց*
*նորա, [9]բաժանեցէք զամուրս՝՝ նորա,*
15 *զի պատմեսջիք յազգ յայլ։ Սա*
*է Աստուած, Աստուած մեր յաւիտեանս*
*յաւիտենից, եւ սա հովուեսցէ զմեզ*
*մինչեւ յաւիտեան։*

[1]Եբր. զի նորին իսկ Աստուծոյ են ասպարք երկրի. բարձր է նա յոյժ։ [2]Եբր. Երգ, Սաղմոս որդւոցն Կորխայ։ [3]Եբր. Գեղեցիկ բարձրութեամբ, ուրախութիւն ամենայն երկրի, լեառն Սիոն. կողմն [4]Եբր. Աստուած յապարանս նորա ծանուցեալ իբրեւ ապաւէն։ [5]Եբր. արեւելից փշրեսցես զնաւս Թարսիսի [6]Եբր. ոյեցին յա—էլո—, Հանգիստ։ [7]Եբր. տաճարի [8]Եբր. թուեցէք [9]Կամ, զննեցէք զապարանս

## ՍԱՂՄՈՍ ԽԸ (ԽԹ)

1 *[10]Ի կատարած. Սաղմոս որդւոցն Կորխայ։*
2 **Լ***ուարուք զայս, ամենայն ազգք, ուն-*
*կնդիր լերուք ամենեքեան որք բնակ-*
3 *եալ էք յաշխարհի։ [11]Ծնունդք երկրի*
*եւ որդիք մարդկան՝՝, ի միասին մեծա-*
4 *մեծք եւ անանկք։ Բերան իմ խօսեսցի*
*զիմաստութիւն, եւ խորհուրդ սրտի իմոյ*
5 *զհանճար։ Խոնարհեցուցից յառակս*
*զունկն իմ, բացից [12]զառակս օրհնու-*
*թեան ի սկզբանէ՝՝։*
6 *Ընդէ՞ր լինի երկնչիմ ես յաւուր չարի.*
*զի անօրէնութիւնք գնացից իմոց շուրջ*
7 *եղեն զինեւ։ Յուսացեալքն ի զօրութիւն*
*իւրեանց, ի բազմութիւն մեծութեան*
8 *իւրեանց պարծեցին։ [13]Եղբայր ոչ փրկէ,*
*եւ ոչ փրկէ մարդ եւ ոչ տայ Աստու-*
9 *ծոյ փրկանս, Եւ ոչ զգինս փրկանաց*
10 *անձին իւրոյ։ Վաստակեա յաւիտեան,*
*եւ կեցցես մինչ ի սպառ, եւ ոչ տես-*
11 *ցես զապականութիւն։ Յորժամ տես-*
*ցես՝՝ թէ իմաստունք մեռանին, ի մի-*
*ասին անզգամք եւ անմիտք կորիցեն, եւ*
*թողցեն օտարաց զմեծութիւն իւր-*
12 *եանց։ [14]Գերեզմանք նոցա տունք նոցա*
*եղիցին յաւիտեան, եւ յարկք նոցա*
*ազգէ մինչեւ յազգ, եւ կարդասցին ա-*
13 *նուանք նոցա ի հողս իւրեանց։ Մարդ ի*
*պատուի [15]էր եւ ոչ իմացաւ, հաւա-*
*սարեաց անասնոց անբանից եւ նման-*
14 *եաց նոցա։ Այս ճանապարհ է գայթակ-*
*ղութեան նոցա նոցին. յետ այսորիկ*
*բերանօք իւրեանց հաճեսցին՝՝*
15 *Որպէս խաշն ի դժոխս մատնեցին,*
*եւ մահ հովուեսցէ զնոսա, եւ տիրես-*
*ցեն նոցա ուղիղք ընդ առաւօտս. [16]օգ-*
*նութիւնք նոցա մաշեսցին ի դժոխս,*
16 *եւ [17]ի փառաց իւրեանց անկցին։ Բայց*
*սակայն Աստուած փրկեսցէ զանձն իմ*
*ի ձեռաց դժոխոց, յորժամ ընդունիցի զիս[6]*

[10]Եբր. Առ գլուխ երաժշտացն [11]Եբր. Որդիք մարդոյ եւ որդիք առն [12]Եբր. քնարաւ զառեղծուածս իմ [13]Եբր. Զեղբայր ոչ փրկելով փրկէ այր, եւ ոչ տայ Աստուծոյ զփրկանս նորա։ (9) Զի պատուական է փրկանք անձին նոցա, եւ թողցի ի սպառ։ (10) Եւ կեցցէ մինչեւ յաւիտեան, մի՛ տեսցէ զապականութիւն։ (11) Զի տեսցէ [14]Կամ, Ի խորհրդեան [15]Եբր. ոչ մնացէ, հաւասարէ անասնոց կորուսելոց։ (14) Այս ճանապարհ նոցա է յիմարութիւն նոցին, յետինք նոցա ընդ բերան նոցա հաճեսցին։ Հանգիստ։ [16]Եբր. կերպարանք [17]Եբր. ի բնակութենէ

17 Մի՛ երկնչիր յորժամ մեծանայ մարդ,
եւ յորժամ բազում լինին փառք տան
18 նորա. Զի ոչ թէ ի մեռանել իւրում
առցէ ընդ իւր զամենայն, եւ ոչ թէ
19 իջցեն փառք տան նորա ընդ նմա։ Այլ
անձն նորա ի կեանս իւրում օրհնեսցի,
խոստովան եղիցի քեզ՝ յորժամ բարի
20 արասցես դու նմա։ Մտցէ նա մինչեւ
յազգ հարց իւրոց, մինչեւ յաւիտեան
21 լոյս մի՛ տեսցէ։ Մարդ ի պատուի [1]էր
եւ ոչ իմացաւ, հաւասարեաց անասնոց
անբանից եւ նմանեաց նոցա՚՚։

## ՍԱՂՄՈՍ ԽԹ (Ծ)

*Սաղմոս Ասափայ։*

1 Աստուած աստուածոց՝ Տէր խօսեցաւ,
եւ կոչեաց զերկիր յարեւելից մինչեւ ի
2 մուտս արեւու. [2]Ի Սիոնէ մեծ վայել-
չութիւն, փրկութեան գեղոյ նորա։
3 Աստուած մեր յայտնապէս եկեսցէ, եւ
Աստուած մեր մի՛ զգաղարեսցէ՚՚. Հուր
առաջի նորա բորբոքեսցի, եւ շուրջ
4 զնովաւ մրրիկ յոյժ։ Կոչեսցէ զերկինս
ի վերուստ, եւ զերկիր՝ ի դատել զժո-
5 ղովուրդ իւր, [3]Ժողովել առ ինքն զսուրբս
իւր, եւ որք գնեն զպատարագս ուխ-
6 տից ի վերայ սեղանոյ նորա՚՚ Պատ-
մեսցեն երկինք զարդարութիւն նորա,
զի Աստուած դատաւոր է։ Հանգիստ։
7 Լուր, ժողովուրդ իմ, եւ խօսեցայց ընդ
քեզ, Իսրայէլ, քեզ վկայեցից. զի
8 Աստուած, Աստուած քո ես եմ։ Ոչ թէ
վասն պատարագաց քոց կշտամբեմ զքեզ.
զի ողջակէզք քո առաջի իմ են յամե-
9 նայն ժամ։ Ոչ ընդունիմ ի տանէ քումմէ
զուարակս, եւ ոչ ի հօտից քոց նոխազս։
10 Իմ է ամենայն գազան անտառի, երէ
11 լերանց [4]եւ ամենայն անասուն՚՚։ Գիտեմ
ես զամենայն թռչունս [5]երկնից, գե-
12 ղեցկութիւն՚՚ վայրի ընդ իս է։ Թէ
քաղցեայց, քեզ ինչ ոչ ասացից. զի իմ
13 է աշխարհ լրիւ իւրով։ [6]Ոչ ուտեմ ես
զմիս զուարակաց քոց, եւ ոչ զարիւն
14 նոխազաց քոց ըմպեմ՚՚։ Մատո Աստու-
ծոյ զպատարագ օրհնութեան, կատարեա
15 Բարձրելոյն զուխտս քո։ Կարդասցես
առ իս յաւուր նեղութեան քո, եւ
փրկեցից զքեզ, եւ դու փառաւոր ա-
րասցես զիս։
16 Սակայն մեղաւորին ասէ Աստուած,
Իսկ դու ընդէ՞ր պատմես [7]զարդա-
րութիւն իմ, կամ առնուս զուխտ իմ
17 ի բերան քո։ Զի դու ատեցեր զխրատ
իմ, մերժեցեր եւ յետս ընկեցեր [8]զամե-
18 նայն բանս բերանոյ իմոյ՚՚։ Թէ տեսա-
նէիր զգող՝ ընթանայիր ընդ նմա, եւ
19 ընդ շունս դնէիր զբաժին քո։ Բերան
քո յաճախէր զչարութիւն, եւ լեզու քո
20 նիւթէր զնենգութիւն։ Նստեալ զեղ-
բօրէ քումմէ չարախօսէիր, եւ ի վերայ
որդւոյ մօր քո դնէիր գայթակղու-
21 թիւն։ Զայս ամենայն արարեր, եւ ես
լռեցի քեզ. կարծեցեր [9]անօրէնդ ի մտի
քում, թէ եւ ես քեզ նմանիցեմ. արդ
յանդիմանեցից եւ կացուցից զայս ամե-
22 նայն առաջի քո։ Իմացարուք, ամենե-
քեան որոց մոռացեալ իցէ զԱստուած,
գուցէ երբեք [10]յափշտակիցէք, եւ ոչ ոք
իցէ որ փրկիցէ։
23 Պատարագ օրհնութեան փառաւոր
արասցէ զիս. եւ [11]անդ է ճանապարհ
ուր՚՚ ցուցից նմա զփրկութիւն Աստուծոյ։

## ՍԱՂՄՈՍ Ծ (ԾԱ)

1 [12]Ի կատարած. Սաղմոս Դաւթի, (2) ի
ժամանակի իբրեւ եկն առ նա Նաթան
մարգարէ, յորժամ մտեալ էր նա առ
Բերսաբէէ։

3 Ողորմեա ինձ, Աստուած, ըստ [9]մեծի
ողորմութեան քում, ըստ բազում գթու-
թեան քում քաւեա զանօրէնութիւնս
4 իմ. Առաւել լուա զիս յանօրէնութենէ
իմմէ, եւ ի մեղաց իմոց սուրբ արա
5 զիս։ Զանօրէնութիւնս իմ ես ինձէն
գիտեմ, եւ մեղք իմ առաջի իմ են յա-
6 մենայն ժամ։ Քեզ միայն մեղայ, Տէր,
եւ չար առաջի քո արարի. որպէս ար-
դար եղիցես ի բանս քո, եւ [13]յաղթօղ
7 ի դատել քեզ։ Անօրէնութեամբ յղա-
ցայ, եւ ի մեղս ծնաւ զիս մայր իմ։
8 Դու, Տէր, զճշմարտութիւն [14]սիրե-
ցեր, զանյայտս՚՚ եւ զծածկեալս իմաս-

[1]Եբր. է եւ ոչ իմանայ, հաւասարէ անասնոց կորուսելոց [2]Եբր. Ի Սիոնէ՝ ի մեծ վայելչութենէ գեղոյ, Աստուած փայլատակեաց ։(3)Աստուած մեր եկեսցէ և մի՛ լռեսցէ [3]Եբր. Ժողովեցէք առ իս զսուրբս իմ, զորս եդին ուխտ ընդ իս պատարագաւ։ [4]Եբր. հազարաւորաց [5]Եբր. լերանց, եւ գազան [6]Եբր. Միթէ ուտե՞մ ես զմիս ցլուց, կամ զարիւն նոխազաց ըմպիցե՞մ։

[7]Եբր. զօրէնս [8]Եբր. զբանս իմ [9]3Եբր. գ—ի——ե [10]Եբր. յափշտակիցեմ [11]Եբր. որում ուղղէն զճանապարհ իւր՝ [12]Եբր. Առ գլուխ երաժշտացն [13]Եբր. սուրբ եղիցիս [14]Եբր. սիրեցեր յերիկամունս

9 տութեամբ քով յայտնեցեր ինձ: Ցօղեա
զիս մշտկաւ եւ սուրբ եղէց, լուա եւ
10 քան զձիւն սպիտակ եղէց: Լսելի արա
ինձ զցնծութիւն եւ զուրախութիւն, եւ
ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք:
11 Դարձո զերեսս քո ի մեղաց իմոց, եւ զա-
մենայն անօրէնութիւնս իմ քաւեա յի-
12 նէն: Սիրտ սուրբ հաստատեա յիս, Աս-
տուած, եւ հոգի ուղիղ նորոգեա ի
13 փորի իմում: Մի՛ ընկենուր զիս, Տէր,
յերեսաց քոց, եւ զՀոգի Սուրբ քո մի՛
14 հաներ յինէն: Տուր ինձ ցնծութիւն
փրկութեան քո, եւ հոգւով [1]պետութեան
քո՝ հաստատեա զիս:
15 Ուսուցից անօրինաց զճանապարհս
քո, եւ ամպարիշտք առ քեզ դարձցին:
16 Փրկեա զիս յարենէ, Աստուած, Աս-
տուած փրկութեան իմոյ. ցնծասցէ լե-
17 զու իմ յարդարութեան քում: Տէր,
եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ
18 երգեսցէ զօրհնութիւնս քո: Թէ կա-
մեցեալ էիր պատարագս՝ մատուցանէաք,
բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճե-
19 ցար: Պատարագ Աստուծոյ՝ հոգի խո-
նարհ. զսիրտ սուրբ եւ զհոգի խոնարհ
Աստուած ոչ արհամարհէ:
20 Բարի արա, Տէր, կամօք քովք Սի-
օնի, եւ շինեսցին պարիսպքն Երուսա-
21 ղեմի: Յայնժամ հաճեսցիս ընդ պատա-
րագս արդարութեան, [2]ուխտից պա-
տարագս՝ հանցեն ի սեղան քո զուա-
րակս:

## ՍԱՂՄՈՍ ԾԱ (ԾԲ)

1 [3]Ի կատարած. Սաղմոս՝ Դաւթի. (2) Ի
ժամանակի զի եկն Դովեկ Եդովմայեցի
պատմեաց Սաւուղի, թէ Ահաւասիկ
Դաւիթ ի տան Աքիմելիքայ է:

3 Զի՞ [4]պարծիս ի չարութեան, հզօր, [5]զա-
4 նօրէնութիւն. Զօրհանապազ զանիրա-
ւութիւն՝ խորհեցաւ ի լեզուի իւրում,
որպէս ածելի սուր արարեր զնենգութիւն:
5 Սիրեցեր զչարութիւն քան զբարութիւն.
զանօրէնութիւն քան զխօսս արդարու-
6 թեան: [6] Սիրեցեր նա զամենայն խօսս
կործանման, եւ զլեզուս նենգաւորս:
7 Վասն այսորիկ Աստուած կործանեսցէ
զնա ի սպառ, խլեսցէ եւ հանցէ զնա
ի յարկաց իւրոց եւ զարմատս նորա յերկ-
8 րէն կենդանեաց: [6] Տեսցեն արդարք եւ
երկիցեն, զնովաւ ծիծաղեսցին եւ ա-
9 սասցեն, Այս այր է որ ոչ արար զԱս-
տուած իւր օգնական, այլ յուսացաւ
առ ի բազում մեծութիւն իւր, եւ զօ-
րացաւ ի նանրութեան իւրում:
10 Այլ ես որպէս ձիթենի պտղալից ի
տան Աստուծոյ. յուսացայ յողորմու-
թիւն Աստուծոյ յաւիտեան եւ յաւիտ-
11 եանս յաւիտենից: Խոստովան եղէց քեզ
յաւիտեան զի արարեր, եւ համբերից
անուան քում, զի քաղցր է առաջի
սրբոց քոց:

## ՍԱՂՄՈՍ ԾԲ (ԾԳ)

[7]Ի կատարած. վասն Մաղաղեթայ. Ի-
մաստութիւն՝ Դաւթի:

1 Ասաց անզգամն ի սրտի իւրում՝ թէ
2 Ոչ գոյ Աստուած. Ապականեցան եւ
պղծեցան յանօրէնութեան իւրեանց, եւ
3 ոչ ոք է որ առնէ զքաղցրութիւն: Աս-
տուած յերկնից նայեցաւ յամենայն որդիս
մարդկան, տեսանել թէ իցէ ոք իմաստուն
4 որ խնդրիցէ զԱստուած: Ամենեքեան
խոտորեցան ի միասին եւ անպիտա-
նացան. ոչ ոք է որ առնէ զբարի, եւ
5 չէ ոք մինչեւ ի մի: Ո՞րպէս ոչ ծանիցեն
ամենեքեան, որ գործեն զանօրէնու-
թիւն. որք ուտէին զժողովուրդ իմ որ-
պէս կերակուր հացի, եւ առ Աստուած
6 ոչ կարդացին: Անդ երկիցեն զերկեւղ ուր
ոչ իցէ երկեւղ. զի Աստուած ցրուեսցէ
զոսկերս [8]մարդահաճոյից. ամաչեսցեն
եւ յամօթ լիցին, զի Աստուած անար-
7 գեաց զնոսա: Ո՛ տացէ ի Սիոնէ զփըր-
կութիւն Իսրայելի. ի դարձուցանել
[9]Տեառն զգերութիւն ժողովրդեան իւ-
րոյ, ցնծասցէ Յակոբ եւ ուրախ եղի-
ցի Իսրայէլ:

---

[1] Եբր. կամաւորաւ, յօժ, ազնուաւ [2] Եբր. ընդ զոհս եւ ընդ ողջակէզս. յայնժամ [3] Եբր. Առ գլուխ երաժշտացն. Երգ [4] Եբր. պարծիս, Այսպէս Եբրայական բնագրին խօսք [illegible] գրեն մինչեւ է [illegible] [illegible] համարին: [5] Եբր. ողորմութիւն Աստուծոյ է զօրհանապազ: (2) Զանիրաւութիւն

[6] Եբրայեցին յաւելու, Հանգիստ: [7] Եբր. Առ գլուխ երաժշտացն. ի վերայ Մահաղեթայ. Երգ [8] Եբր. որոց պաշարեն զքեզ [9] Եբր. Աստուծոյ

## ՍԱՂՄՈՍ ԾԳ (ԾԴ)

1 [1]Ի կատարած. ընդ օրհնութիւնս", իմաս-
2 տութիւն Դաւթի, Ի ժամանակի զի
եկին Զիփացիքն, եւ ասեն ցՍաւուղ՝
Ահաւասիկ Դաւիթ թաքուցեալ նստի
առ մեզ։

3 Աստուած, յանուան քում կեցո զիս,
եւ ի զօրութեան քում իրաւ արա ինձ։
4 Աստուած, լուր աղօթից իմոց, ունկն
5 դիր բանից բերանոյ իմոյ։ Օտարք յա-
րեան ի վերայ իմ, եւ հզօրք խնդրեցին
զանձն իմ, եւ ոչ համարեցան զքեզ
Աստուած առաջի իւրեանց։[2]
6 Ահա Աստուած օգնական իմ, եւ Տէր
7 [3]ընդունելի հոգւոյ իմոյ"։ Ի դարձուցա-
նել զչարն ի թշնամիս իմ, ճշմարտու-
8 թեամբ քով սատակեա զնոսա։ Ես կա-
մօք իմովք պատարագս մատուցից քեզ.
խոստովան եղէց անուան քում, Տէր,
9 զի բարի է։ Յամենայն նեղութենէ իմմէ
փրկեցեր զիս, եւ ի թշնամիս իմ ետես
ակն իմ։

## ՍԱՂՄՈՍ ԾԴ (ԾԵ)

1 [1]Ի կատարած. ընդ օրհնութիւնս իմաս-
տութիւն". Սաղմոս Դաւթի։

2 Ունկն դիր, Աստուած, աղօթից իմոց,
եւ մի՛ անտես առներ զխնդրուածս իմ։
3 Նայեաց առ իս եւ լուր ինձ, զի տրտ-
մեցայ ես ի ձանձրանալ իմում եւ խռո-
4 վեցայ. Ի ձայնէ թշնամւոյն եւ ի նե-
ղել մեղաւորի, [4]խոտորեցան յիս անի-
րաւութեամբ", բարկութեամբ ոխս պա-
հէին ինձ։
5 Սիրտ իմ խռովեցաւ յիս, եւ երկեւղ
6 մահու անկաւ ի վերայ իմ։ Ահ եւ դո-
ղումն եկն ի վերայ իմ, եւ ծածկեաց
7 զիս խաւար։ Ասէի՝ Տայր ոք ինձ թեւս
որպէս աղաւնւոյ, զի թռչէի, վերա-
8 նայի։ Հեռացեալ դադարէի յանապատի.
9 [5]Ակն ունէի Աստուծոյ որ փրկէր զիս ի
կարճմտութենէ ի պայրանալոյ, եւ ի մրրկ-
10 եալ նեղութենէ"։ Ընկղմ, Տէր, եւ
բաժանեա զլեզուս նոցա, զի տեսի զա-
նօրէնութիւն եւ զհակառակութիւն ի
11 քաղաքի։ Ի տուէ եւ ի գիշերի շուրջ
եղեն զպարսպօք նորա անօրէնութիւնք,
12 չարիք եւ մեղք են ի մէջ նորա։ Եւ ոչ
պակասեաց ի հրապարակաց նորա վաշխ
13 եւ նենգութիւն։ Զի թէ թշնամւոյն
նախատեալ էր՝ համբերէի արդեւք, կամ
ատելւոյն մեծաբանեալ էր ի վերայ իմ՝
14 թաքչէի արդեւք ի նմանէ։ Իսկ դու,
մարդ, հաւասար իմ, [6]առաջնորդ իմ եւ
15 ծանօթ իմ. [7]Ապաքէն ի նոյն քաղցրա-
ցուցեր ինձ եւ քեզ կերակուր, զի"
գնայաք միաբանութեամբ ի տուն Աս-
16 տուծոյ։ Եկեսցէ մահ ի վերայ նոցա,
եւ կենդանւոյն իջցեն ի դժոխս. զի
չարութիւն է ի բնակութեան նոցա եւ
17 ի մէջ նոցա։ Ես առ Աստուած կար-
18 դացի, եւ Տէր լուաւ ինձ։ Երեկոյս, ի
վաղորդայն, եւ ի հասարակ աւուր՝ պատ-
մեցի եւ ասացի, եւ լուիցէ ձայնի ի-
19 մում։ Փրկեսցէ խաղաղութեամբ զանձն
իմ [8]ի մերձաւորաց իմոց, զի կարիօք"
20 հասին ի վերայ իմ։ Լուիցէ Աստուած
եւ [9]խոնարհ արասցէ զնոսա, որ յառաջն
է քան զյաւիտեանս. զի ոչ գոյր նոցա
փոխանակ," եւ ոչ երկեան յԱստուծոյ։
21 Ձգեաց զձեռն իւր [10]ի հատուցանել նո-
ցա, եւ նոքա պղծեցին զօրէնս նորա։
22 Բաժանեցան ի բարկութենէ երեսաց
նորա, եւ եհաս ի սիրտս նոցա". կա-
կուղ էին բանք նոցա քան զձէթ, եւ
ինքեանք էին որպէս սլաք։
23 Ընկեա ի Տէր զհոգս քո, եւ նա կե-
րակրէ զքեզ, եւ ոչ տայ յաւիտեան
24 սասանութիւն արդարոյ։ Դու, Աս-
տուած, իջուսցես զնոսա ի դուբ ա-
պականութեան, արք արիւնահեղք եւ
նենգաւորք մի՛ հասարակեսցեն զա-
ւուրս իւրեանց. այլ ես ի քեզ, Տէր,
յուսացայ։

## ՍԱՂՄՈՍ ԾԵ (ԾԶ)

1 [11]Ի կատարած. վասն ժողովրդեանն, որ
ի սրբոյն հեռացեալ էին. ի ժամանակի
զի կալան զնա այլազգիքն ի Գէթ. յար-
ձանագիր. Սաղմոս Դաւթի։"

2 Ողորմեա ինձ, Աստուած, զի կոխեաց

[1] Եբր. Առ գլուխ երաժշտացն, ի վերայ Նկինովթայ. [2] Եբրայեցին յաւել—, Հանգիստ։ [3] Եբր. է ընդ որս պաշտպան են անձին իմում [4] Եբր. զի ածէին յիս անիրաւութիւն. [5] Եբր. Հանգիստ։ (9) Անապարէի փախչել ի սաստկութենէ հողմոյ, ի մրրկէ։

[6] Կամ, ընկեր [7] Եբր. Խօսէաք ընդ միմեանս քաղցրութեամբ, [8] Եբր. յորոց մերձենան յիս, զի բազմութեամբ [9] Եբր. տացէ պատասխանի, որ բնակէն ի յաւիտենից։ Հանգիստ։ Զի ոչ փոխին նոքա [10] Եբր. յորս հաշտ էին ընդ նմա. պղծեաց զուխտ իւր։ (22) Բերան նորա կակուղ է քան զկոգի, այլ ի սրտի նորա պատերազմ [11] Եբր. Առ գլուխ երաժշտացն. ի վերայ Աղաւնւոյ համեր՝ հեռացելոյ. Արձանագիր Դաւթի, ի ժամանակի զի կալան զնա այլազգիքն ի Գեթ։

զիս մարդ, զօրհանապազ պատերազ-
3 մունք նեղեցին զիս։ Կոխեցին զիս թըշ-
նամիք իմ զօրհանապազ, եւ բազում
եղեն ոյք մարտնչէին ընդ իս ի բար-
4 ձանց։ [1]Ի տուէ ես ոչ երկեայց, զի ի
5 Տէր յուսացայ. Աստուծով գովեցից
զբանս իմ". յԱստուած յուսացայ եւ ոչ
6 երկեայց զի՞ արասցէ ինձ մարդ։ Զօր-
հանապազ զբանս իմ անարգեցին, զի-
նէն էին խորհուրդք նոցա ի չարութիւն։
7 [2]Պանդուխտք եղիցին եւ թաքթաքունք
չըջեսցին". նոքա զարշապարի իմում
սպասեսցեն՝ որպէս եւ սպասէին անձին
8 իմոյ։ [3]Որպէս առ ոչինչ մերժեսցես
զնոսա". բարկութեամբ զժողովուրդս
9 հնազանդեսցուսցես, Աստուած։ [4]Զկեանս
իմ պատմեցից քեզ. եդից զարտասուս
իմ առաջի քո որպէս խոստացար դու
10 ինձ։" Դարձցին թշնամիք իմ յետս իւր-
եանց, յաւուր յորում կարդացից առ
քեզ. ահա ծանեայ զի Աստուած իմ ես
դու։ [5]ԶԱստուած օրհնեցից ի բանս իմ,
11 եւ զՏէր գովեցից ի խօսս իմ". յԱս-
տուած յուսացայ եւ ոչ երկեայց, զի՞
արասցէ ինձ մարդ։
12 [6]Ցինէն են ուխտք իմ, զոր տաց քեզ,
13 Աստուած, օրհնութեամբ։" Փրկեսցես
զանձն իմ ի մահուանէ, [7]զաչս իմ յար-
տասուաց, եւ զոտս իմ ի գայթակղու-
թենէ. հաճոյ եղէց առաջի Տեառն
յերկրին կենդանեաց"։

## ՍԱՂՄՈՍ ԾԶ (ԾԷ)

1 [8]Ի կատարած. Մի՛ ապականեր. Դաւթի
արձանագիր. ի ժամանակի զի փախու-
ցեալ թաքուցեալ էր նա յերեսաց Սաւու-
ղայ՝ յայրի անդ։

2 Ողորմեա ինձ, Աստուած, ողորմեա
ինձ, զի ի քեզ յուսացաւ անձն իմ. ի
հովանի թեւոց քոց յուսացայց, մինչեւ
3 անցցէ անօրէնութիւն։ Աղաղակեցի առ
Աստուած բարձրեալ, առ Աստուած բա-
4 րերար իմ։ [9]Առաքեաց յերկնից եւ կե-
ցոյց զիս, ետ ի նախատինս որ կոխէին
զիս. առաքեաց Աստուած զողորմու-
5 թիւն եւ զճշմարտութիւն իւր. Եւ
փրկեաց զանձն իմ ի միջոյ զազանաց, զի
ննջէի ես խռովեալ". որդւոց մարդկան
ատամունք իւրեանց զէն եւ նետք են,
եւ լեզուք նոցա որպէս զսուր սուսերի։
6 Բարձրեալ ես դու յերկինս, Աստուած,
եւ յամենայն երկրի են փառք քո։
7 Որոգայթ պատրաստեցին ոտից իմոց,
[10]խոնարհ արարին զանձն" իմ. փորեցին
առաջի իմ խորխորատ, եւ անկանէինք-
8 եանք ի նոյն։[11] Պատրաստ է սիրտ իմ,
Աստուած, պատրաստ է սիրտ իմ օրհ-
նել եւ սաղմոս ասել [12]քեզ փառօք ի-
9 մովք"։ Զարթիր, փառք իմ, զարթիր
սաղմոսիւք եւ օրհնութեամբ, եւ ես
10 զարթեայց առաւօտուց։ Խոստովան եղէց
քեզ ի ժողովուրդս, Տէր, եւ սաղմոս
11 ասացից քեզ յազգինս։ Մեծ եղեւ մին-
չեւ յերկինս ողորմութիւն քո, մինչեւ
12 յամպս ճշմարտութիւն քո։ Բարձրեալ ես
դու յերկինս, Աստուած, եւ յամենայն
երկրի են փառք քո։

## ՍԱՂՄՈՍ ԾԷ (ԾԸ)

1 [8]Ի կատարած. Մի՛ ապականեր. ար-
ձանագիր Դաւթի։

2 Թէ արդարեւ զարդարութի՞ւն խօսէիք,
եւ ուղի՞ղս դատէիք, որդիք մարդկան։
3 Քանզի եւ արդ իսկ ի սրտի ձերում զա-
նօրէնութիւն գործէք, յերկրի զանիրա-
4 ւութիւն ձեռք ձեր նիւթեն։ Օտար եղեն
մեղաւորք ի մօրէ, խաբեցան յարգանդէ
5 եւ խօսեցան սուտ։ [13]Սրտմտութիւն
նոցա ըստ նմանութեան օձի, որպէս
իժի եւ քարբի զի խցեալ է զականջս
6 իւր, Զի մի՛ լուիցէ նա զձայն թովչի
ճարտարի, [14]եւ մի՛ առցէ դեղ ի դե-
7 ղատուէ իմաստնոյ"։ Աստուած փշրեսցէ
զատամունս նոցա ի բերանս իւրեանց,
եւ զժանիս առիւծուց խորտակեաց Տէր։
8 [15]Անարգ եղիցին" նոքա որպէս ջուր զի
հեղու, ի լարել աղեղան նորա տկա-

[1] Եբր. Յաւուր յորում երկեայց, ի քեզ յուսացայց. Աստուծով գովեցից զբանս Նորա [2] Եբր. ժողովին եւ թաքչին [3] Եբր. Յանօրէնութեան չիցի՞ նոցա խուսափել [4] Եբր. Զթափառել իմ հաշուեցեր. դիր զարտասուս իմ ի տկի քում. ո՞չ ապաքէն ի գրութեան քում են։ [5] Եբր. Աստուծով օրհնեցից զբանն Նորա, Տերամբ օրհնեցից զբանն Նորա [6] Եբր. Յիմ վերայ են, Աստուած, ուխտք քո, մատուցից գովութիւնս քեզ։ [7] Եբր. ո՞չ եւ զոտս իմ ի գայթակղութենէ, զի գնացից առաջի Աստուծոյ ի լոյս կենդանեաց [8] Եբր. Առ գլուխ երաժշտացն

[9] Եբր. Առաքեսցէ յերկնից եւ փրկեսցէ զիս ի նախատանաց որոց կլանեն զիս։ Հանգիստ։ Առաքեսցէ Աստուած զողորմութիւն իւր և զճշմարտութիւն իւր։ (5) Անձն իմ ի մէջ առիւծուց, ննջեմ ի մէջ զայրացելոց [10] Եբր. խոնարհեցաւ անձն [11] Եբր. [illegible], Հանգիստ։ [12] Եբր. [illegible] [13] Եբր. Թոյն [14] Եբր. որ հմայէ հմայս [15] Եբր. Հալեսցին

9 րասցին․ Որպէս [1]մոմ զի հալի, եւ
10 սպառեսցին։ Անկաւ հուր եւ ոչ տեսին
զարեւ, մինչչեւ ի միտ առեալ էր
զփուշս իւրեանց. որպէս զմնիկ բար-
կութեամբ կենդանւոյն կլլեսցէ զնոսա։"
11 Ուրախ եղիցի արդար՝ յորժամ տեսցէ
զհատուցումն, եւ [2]զձեռս իւր լուասցէ
12 յարեան մեղաւորի։ Եւ ասասցէ մարդ,
թէ Արդարեւ գուցէ պտուղ արդարոյ,
եւ է Աստուած որ դատի զնոսա յերկրի

## ՍԱՂՄՈՍ ԾԸ (ԾԹ)

1 [3]Ի կատարած. Մի՛ ապականեր, Դաւթի
արձանագիր, ի ժամանակի զի առաք-
եաց Սաւուղ պահապանս զտունն նորա,
զի սպանցէ զնա։

2 Փրկեա զիս ի թշնամեաց իմոց, Աս-
տուած, յայնցանէ որ յարուցեալ են ի
3 վերայ իմ ապրեցո զիս։ Փրկեա զիս
յայնցանէ ոյք գործեն զանօրէնութիւն,
յարանց արիւնահեղաց ապրեցո զիս։
4 Որսալ զանձն իմ կամեցան, եւ հասին
ի վերայ իմ հզօրք. ոչ մեղք իմ եւ ոչ
5 յանցանք։ Առանց մեղաց [4]ընթացայ եւ
ուղիղ եղէ". զարթիր ընդ առաջ իմ եւ
6 տես։ Դու Տէր զօրութեանց, Աստուած
Իսրայէլի. նայեաց եւ այց արա ա-
մենայն հեթանոսաց, մի՛ ողորմիր ա-
մենեցուն ոյք գործեն զանօրէնութիւն։[5]
7 Դարձցին ընդ երեկոյս, [6]սովեսցին որ-
պէս շունք եւ շրջեսցին զքաղաքաւ։
8 Նոքա զօղանջեսցեն բերանովք իւր-
եանց, եւ սուր ի շրթունս նոցա. իսկ
9 արդ ո՞վ լուաւ զայս։ Զի դու, Տէր,
ծիծաղեսցիս զնոքօք, եւ արհամարհես-
10 ցես զամենայն հեթանոսս։ [7]Զզօրութիւն
իմ առ քեզ պահեսցից", զի Աստուած
11 օգնական իմ է։ Աստուած իմ, ողոր-
մութիւն նորա կանխեսցէ առ իս, եւ
Աստուած իմ ցուցցէ ինձ ի թշնամիս իմ։
12 Մի՛ սպանաներ զնոսա, զի մի՛ [8]մո-
ռասցին զժողովուրդս քո". ցրուեա զնո-
սա զօրութեամբ քով եւ ընկեա զնո-
սա, զի դու ես պաշտպան իմ, Տէր։

13 Մեղք բերանոյ նոցա եւ բանք շրթանց
նոցա, ըմբռնեսցին նոքա յամբարտաւանու-
թեան իւրեանց. յանէծս եւ ի ստու-
14 թիւն մատնեսցին. Ի կատարածի բար-
կութեան սպառեսցին, եւ մի՛ գտցին.
գիտասցեն զի Աստուած տիրէ Յակո-
15 բայ, եւ ամենայն ծագաց երկրի։[5] Դարձ-
ցին ընդ երեկոյս, [6]սովեսցին որպէս
16 շունք եւ շրջեսցին զքաղաքաւ. Նոքա
սփռեսցին յուտել, ապա թէ ոչ յագե-
ցին՝ տրտնջեսցեն։
17 Ես օրհնեցից զօրհնութիւնս Տեառն,
ցնծացայց առաւօտուց յողորմութեան
18 քում, զի եղեր իմ պաշտպան Եւ տուն
ապաւինի, յաւուր նեղութեան իմոյ։
19 Օգնական իմ, քեզ սաղմոս ասացից,
Աստուած ապաւէն իմ, Աստուած ո-
ղորմութեան իմոյ։

## ՍԱՂՄՈՍ ԾԹ (Կ)

1 [9]Ի կատարած. զառանցելոց ժամանակաց
2 առ ուսմանէ. Ի ժամանակի զի հրձիգ
արար նա զՄիջագետս եւ զԱսորես-
տանն Սորոզայ, եւ ի դարձին հարկա-
նէր Յովաբ զձորն Աղաից յերկոտասան
հազարս. արձանագիր. Սաղմոս Դաւթի։"

3 Աստուած, մերժեցեր եւ աւերեցեր
զմեզ, բարկացար եւ գթացիր ի մեզ։
4 Շարժեցեր զերկիր եւ խռովեցուցեր զսա,
բժշկեա զհարուածս սորա զի սասանե-
5 ցաւ։ Ցուցեր ժողովրդեան քում խստու-
թիւն, եւ ետուր ըմպել մեզ գինի յի-
6 մարութեան։ Ետուր երկիւղածաց քոց
նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան։[5]
7 Որպէս փրկեսցին սիրելիք քո, կեցո ա-
8 ջով քո եւ լուր մեզ։ Աստուած խօսե-
ցաւ ի սրբութենէ իւրմէ, ցնծացայց,
բարձր եղէց, բաժանեցայց զՍիւքէմ,
9 եւ զհովիտն [10]Յարկաց չափեցից։ Իմ է
Գաղաադ եւ իմ է Մանասէ, Եփրեմ
հզօրիչ գլխոյ իմոյ, Յուդա [11]թագաւոր
10 իմ, Մովաբ աւազան [12]յուսոյ իմոյ. ՅԻ-
դումէ ուղղեցից զգնացս իմ, [13]եւ ինձ
11 այլազգիք հնազանդ եղեն"։ Ո՞ տարցի

[1] Եբր. խխունջ զի հալի ի գնալ իւրում. իբրեւ զվիժած կնոջ որ ոչ տեսցէ զարեւ։ (10) Մինչչեւ կաթսայից ձերոց առեալ զպտղունս փշոց, թէ՛ կցեն դալար թէ՛ բորբոքեալ, մրրկաւ ցրուեսցէ զնոսա։ [2] Եբր. զոտս [3] Եբր. Առ գլուխ երաժշտացն [4] Եբր. էի, ընթացան եւ պատրաստ եղեն [5] Եբրայեցին յաւելու, Հանգիստ։ [6] Եբր. հաչեսցեն [7] Եբր. Ով զօրութիւն իմ կամ նորա, քեզ սպասեցից [8] Եբր. մոռասցի ժողովուրդ իմ

[9] Եբր. Առ գլուխ երաժշտացն, ի վերայ Շուշանէդութի. արձանագիր Դաւթի, առ ուսմանէ. (2) Ի կռուել նորա ընդ Ասորւոց Միջագետաց եւ ընդ Ասորւոց Սուբայ, եւ ի դարձին հարկանէր Յովաբ զԵդովմայեցիս ի ձորն Աղտից երկոտասան հազարս։ [10] Եբր. Սոկքովթայ [11] Եբր. օրէնսդիր [12] Եբր. լուացման [13] Եբր. զինէն, Փղշտացիք, ցնծացէք

գիս ի քաղաք ամուր, կամ ո՞ առաջ-
12 նորդեսցէ ինձ մինչեւ յԵդովմէ. Եթէ ոչ
դու, Աստուած, որ մերժեցեր զմեզ,
եւ ոչ ելեր, Աստուած, ընդ զօրս մեր։
13 Տուր մեզ օգնութիւն ի նեղութեան, զի
14 ընդունայն է փրկութիւն մարդոյ։ Աս-
տուծով արասցուք զօրութիւն, եւ նա
արհամարհեսցէ զայնոսիկ որ նեղեն զմեզ։

## ՍԱՂՄՈՍ Կ (ԿԱ)

1 [1]Ի կատարած ընդ օրհնութիւնս. Սաղ-
մոս Դաւթի։"

2 Լուր, Աստուած, աղօթից իմոց, եւ
3 նայեաց, Տէր, յաղօթս իմ։ Ի ծագաց
երկրէ կարդացի առ քեզ, մինչ ի վաս-
տակել սրտի իմոյ. [2]ի վիմէ բարձր ա-
4 րարեր զիս, առաջնորդեցեր ինձ. Եւ"
իմ եղեր յոյս, եւ աշտարակ հզօր եղեր
5 ինձ յերեսաց թշնամւոյն։ Բնակեցայց
ես ի յարկս քո յաւիտեան, եւ ծածկե-
6 ցայց ընդ հովանեաւ թեւոց քոց։[3] Դու,
Աստուած, լուար աղօթից իմոց, ետուր
ժառանգութիւն՝ որք երկնչին յանուանէ
7 քումմէ։ Աւուրս յաւուրս յաւելեր թա-
գաւորի, [4]ամաց նորա, աւուրս ազգաց
8 մինչեւ յազգս նորա"։ Կայ եւ մնայ յա-
ւիտեան առաջի Աստուծոյ. [5]ողորմու-
թիւն, եւ ճշմարտութիւն որք խնդրես-
9 ցեն ի նմանէ"։ Այսպէս սաղմոս ասացից
քեզ յաւիտեանս յաւիտենից, եւ տաց
քեզ զաղօթս իմ օր ըստ օրէ։

## ՍԱՂՄՈՍ ԿԱ (ԿԲ)

1 [6]Ի կատարած. ի վերայ Իդիթունայ.
Սաղմոս Դաւթի։

2 Բայց միայն Աստուծոյ հնազանդ լեր,
անձն իմ, զի ի նմանէ է ինձ փրկու-
3 թիւն։ Նա է [7]Աստուած իմ եւ փրկիչ
իմ, ապաւէն իմ՝ զի մի սասանեցայց
4 առաւել։ Մինչեւ յե՞րբ յառնէք ի վերայ
մարդոյ՝ սպանանել ամենեքեան, որպէս
յորմոյ թիւրելոյ եւ ի ցանգոյ[8] մերժե-
5 լոյ։ Բայց միայն [9]զպատիւ իմ խորհեցան
մերժել յինէն, եւ ընթացան ի ծարաւս
իւրեանց". բերանովք իւրեանց օրհնէին,
եւ սրտիւք իւրեանց անիծանէին։[3]
6 Բայց սակայն Աստուծոյ հնազանդ լեր
անձն իմ, զի ի նմանէ է ինձ համբերու-
7 թիւն։ Նա է [7]Աստուած իմ եւ փրկիչ
իմ, ապաւէն իմ՝ զի մի սասանեցայց։
8 ՅԱստուծոյ է զօրութիւն իմ եւ փառք
իմ. Աստուած օգնութեան իմոյ, յոյս
9 իմ է առ Աստուած։ Յուսացարուք ի նա
ամենայն ժողովք ժողովրդոց, սփռեցէք
առաջի նորա զսիրտս ձեր, զի Աստուած
օգնական է մեր [10]յաւիտեանս ժամանա-
կաց"։ Հանգիստ։
10 Սակայն ընդունայն են որդիք մարդ-
կան, սուտ են որդիք [11]մարդկան, ի կշիռս
իւրեանց մեղանչեն, եւ ինքեանք յու-
11 նայնութեան են ի միասին"։ Մի յուսայք
յանիրաւութիւն, յափշտակութեան մի
ցանկայք. եւ մեծութիւն եթէ առուով
գայցէ, մի յօժարեսցին սիրտք ձեր։
12 Միանգամ խօսեցաւ Աստուած, [12]եւ
երկուս" զայս լուայ. Աստուծոյ է զօ-
13 րութիւն. Եւ քո, Տէր, ողորմութիւն,
եւ դու հատուցանես իւրաքանչիւր ըստ
գործս նոցա։

## ՍԱՂՄՈՍ ԿԲ (ԿԳ)

1 Սաղմոս Դաւթի, մինչ էր նա յանա-
պատին Հրէաստանի։

2 Աստուած, Աստուած իմ, ես առ քեզ
առաւօտ առնեմ. ծարաւեաց առ քեզ
հոգի իմ, քանիպատի՞կ եւս եւ մարմին
իմ, որպէս երկիր անապատ եւ անջուր,
3 [13]Ուր ոչ դոյ ինմա ճանապարհ, այսպէս
ի սուրբս երեւեցայց քեզ", տեսանել
ինձ զզօրութիւն քո եւ զփառս քո։
4 Վասն զի լաւ է ինձ ողորմութիւն քո
քան զկեանս իմ, եւ շրթունք իմ գո-
5 վեսցեն զքեզ։ Այսպէս օրհնեցից զքեզ
ի կեանս իմ, եւ յանուն քո համբարձից
6 զձեռս իմ։ Որպէս ի ճարպոյ պարար-
տութենէ լցցի անձն իմ, շրթամբք ցնծու-
7 թեան օրհնեսցէ զքեզ բերան իմ։ Զի
թէ յիշէի զքեզ յանկողնի իմում, ընդ ա-
8 ռաւօտս կանխեալ խօսէի ընդ քեզ։ Զի
եղեր իմ օգնական, ի հովանի թեւոց
9 քոց ցնծացայց։ Եկն զկնի քո անձն իմ,
10 եւ զիս ընկալաւ աջ քո։ Եւ նոքա ի նա-
նիր խնդրեցին զանձն իմ. մտցեն ի ներ-

[1]Եբր. Առ գլուխ երաժշտացն. ի վերայ Նեգինովթայ, Նորին Դաւթի։ [2]Եբր. ի վէմ որ բարձր է քան զիս՝ առաջնորդեա ինձ. (4) Զի [3]Եբր. դադար, Հանգիստ։ [4]Եբր. ամք նորա իբրեւ ազգաց յազգս [5]Եբր. զողորմութիւն եւ զճշմարտութիւն պատրաստեա որ պահեսցեն զնա [6]Եբր. Առ գլուխ երաժշտացն [7]Եբր. վէմ [8]Եբր. խախտելոյ [9]Եբր. ի պատուոյ նորա խորհեցան մերժել զնա, ախորժեցին ընդ ստութիւն

[10]Յ Եբր. դադար [11]Եբր. աղնուաց. ի կշռարդի վերանան ամենեքին միանգամայն առ ունայնութիւն [12]Եբր. երկիցս [13]Եբր. Հայեցայ ի քեզ ի սրբութեան քում

11 քոյ անդնդոց երկրի. Մատնեսցին ի
ձեռս սրոյ, եւ բաժինք աղուեսուց ե-
12 ղիցին։ Թագաւոր յուսասցէ [1]ի Տէր, գո-
վեսցին ամենեքեան որ երդնուն նովաւ.
խցցին բերանք այնոցիկ որք խօսէին զա-
նիրաւութիւն։

## ՍԱՂՄՈՍ ԿԳ (ԿԴ)

1 [2]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

2 Լուր, Աստուած, աղօթից իմոց յաղա-
չել իմ առ քեզ, յերկիւղէ թշնամւոյն
3 փրկեա զանձն իմ։ Ծածկեսցես զիս ի ժո-
ղովոց չարաց, ի բազմութենէ որք գոր-
4 ծեն զանօրէնութիւն։ Որք սրեցին որ-
պէս սուսեր զլեզուս իւրեանց, լարե-
ցին զաղեղունս իւրեանց յիրս դառ-
5 նութեան, Զգել ի գաղտնիս այնոցիկ որք
ուղիղ են սրտիւք. յանկարծակի ձգես-
6 ցեն ի նոսա եւ մի՛ երկիցեն։ Որք զօ-
րացուցին յանձինս իւրեանց զբանս չա-
րութեան, խորհեցան թաքուցանել ինձ
որոգայթ, եւ ասացին՝ [3]Ո՞չ տեսանէ զայս
7 Տէր։ Քննեցին զանօրէնութիւն, պար-
8 տասեցան ի քննել զքննութիւն։ Մատի-
ցէ այր ի խորութիւն սրտի իւրոյ, եւ
9 բարձր եղիցի Աստուած։ Նետք տղայոց
եղեն վէրք նոցա, տկարացան ի նոսա
լեզուք իւրեանց. եւ խռովեսցին ամե-
10 նեքեան որք հային ընդ նոսա։" Երկեաւ
ամենայն մարդ եւ պատմեցին զգործս
Աստուծոյ, եւ զարարածս նորա ի միտ ա-
11 ռին։ Ուրախ եղիցի արդար ի Տէր, եւ
յուսասցի ի նա. նովաւ գովեսցին ամե-
նեքեան որք ուղիղ են սրտիւք։

## ՍԱՂՄՈՍ ԿԴ (ԿԵ)

1 [4]Ի կատարած. Սաղմոս Դաւթի. օրհնու-
թիւն Երեմիայի եւ Եզեկիէլի եւ ժո-
ղովրդեանն յորժամ ի պանդխտութենէն
կամէին ելանել։"

2 Քեզ վայել է օրհնութիւն, Աստուած, ի
Սիոն, եւ քեզ տացին աղօթք [5]յԵրու-
3 սաղէմ։ Լուր աղօթից իմոց, զի առ քեզ
4 ամենայն մարմին եկեսցէ։ Բանք անօ-
րինաց զօրացան ի վերայ մեր, զամ-
պարշտութիւնս մեր դու քաւեսցես։
5 Երանի՛ զոր ընտրեցեր եւ ընկալար, եւ
բնակեսցէ ի գաւիթս քո. լցցուք մեք ի
բարութենէ տան քո, սուրբ է տաճար քո
6 Սքանչելի արդարութեամբ, լուր մեզ,
Աստուած փրկիչ մեր, յոյս ամենայն ծա-
7 գաց երկրի եւ որ ի ծով հեռի։ Ո պատ-
րաստէ զլերինս զօրութեամբ իւրով, եւ
8 զգեցեալ է զօրութիւն։ Ո [6]խռովեցու-
ցանէ զմեծութիւն ծովու, եւ զձայն
ալեաց նորա ցածուցանէ. խռովեսցին
9 հեթանոսք։" Եւ երկիցեն բնակիչք երկ-
րի ի նշանաց քոց. [7]ելս առաւօտու եւ ընդ
երեկոյս դու արձակեսցես։"
10 Հայեցար յերկիր՝ արբեցուցեր զնա,
եւ բազում արարեր զմեծութիւն նորա.
գետն Աստուծոյ լի եղեւ ջուրբ. պատ-
րաստ արարեր զկերակուր նոցա, զի
11 այսպէս է պատրաստութիւն։ Զակօս
նորա արբուցեր, եւ [8]բազում արա-
րեր զարմտիս նորա". ի ցօղել նորա՝
12 զուարթ եղիցի բոյս նորա. [9]Օրհնեսցի
պսակ տարւոյ քաղցրութեան քո.
դաշտք քո լցցին պարարտութեամբ.
13 Պարարտասցին գեղեցկութիւնք անա-
պատի". բլուրք ցնծութիւն զգեցցին.
14 Զգեցցին [10]խոյք մաքեաց". հովիտք բա-
զում արասցեն ցորեան. աղաղակեսցեն
եւ օրհնեսցեն։

## ՍԱՂՄՈՍ ԿԵ (ԿԶ)

1 [11]Ի կատարած. Սաղմոս Դաւթի. վասն
յարութեան։"

2 Աղաղակեցէք առ Աստուած ամենայն
երկիր. սաղմոս ասացէք անուան նորա,
եւ տուք զփառս օրհնութեան նորա։
3 Ասացէք Աստուծոյ՝ Որպէս զի՜ ահեղ են
գործք քո, ի բազում զօրութեան քում
4 ստեսցին քեզ թշնամիք քո։ Ամենայն եր-
կիր երկիր պագցեն քեզ, սաղմոս ա-
սասցեն քեզ, եւ սաղմոս ասասցեն
անուան քում։[12]

[1] Եբր. յԱստուած [2] Եբր. Առ գլուխ երաժշտացն
[3] Եբր. Ո՞ տեսցէ զնոսա։ (7) Խորհեցան զանօրէ-
նութիւն. կատարեցին զխորհուրդն զոր խորհե-
ցան. ներքին մարդոյ եւ սիրտ խոր են։ (8) Հարցէ
զնոսա Աստուած նետիւք. յանկարծակի առ-
ցեն վէրս։ (9) Այսպէս տացի նոցա գթել, զի
հակառակ անձանց նոցա է լեզու նոցա. խու-
սեսցեն ամենեքեան որք տեսցեն զնոսա։ [4] Եբր.
Առ գլուխ երաժշտացն. Սաղմոս Դաւթի, երգ։
[5] Յեբր. պակաս

[6] Եբր. ցածուցանէ զձայն ծովու, զձայն ալեաց
նորա, եւ զխռովութիւն ազգաց։ [7] Եբր. զելս
առաւօտու եւ զերեկոյն դու ուրախ առնես
[8] Եբր. հարթեցեր զփոսս նորա [9] Եբր. Պսակեցեր
զտարին քաղցրութեամբ քով. եւ շաւիղք
քո կաթեցուցեն պարարտութիւն. (13) Կաթե-
ցուսցեն յարօտս անապատի [10] Եբր. Դաշտք
խաշամբք [11] Եբր. Առ գլուխ երաժշտացն.
երգ, Սաղմոս։ [12] Եբրայեցին յաւելու, Հանգիստ

5 Եկայք եւ տեսէք զգործս Աստուծոյ,
որպէս զի՛ ահեղ են խորհրդովք քան զա-
6 մենայն որդւոց մարդկան։ Ո դարձոյց
զծովս ի ցամաք, եւ ընդ գետս անցցեն
յոտնաւոր. անդ ուրախ եղիցուք մեք
7 ի նա։ Որ տիրէն զօրութեամբ իւրով յա-
ւիտենից, աչք նորա ի հեթանոսս հային.
ոյք դառնացուցին զնա՝ մի՛ բարձրաս-
ցին յանձինս իւրեանց։[1]
8 Օրհնեցէք, հեթանոսք, զԱստուած
մեր, լսելի արարէք զձայն օրհնութեան
9 նորա։ Այն որ ետ զանձն իմ ի կեանս,
10 եւ ոչ ետ զդողութիւն ոտից իմոց։ Փոր-
ձեցեր զմեզ, Աստուած, եւ քննեցեր,
11 որպէս եւ քննի արծաթ։ Իջուցեր զմեզ
յորոգայթ, եդիր նեղութիւն ի թիկունս
12 մեր։ Անցուցեր զմարդիկ ի վերայ գլխոց
մերոց. անցաք մեք ընդ հուր եւ ընդ
ջուր, եւ հաներ զմեզ ի հանգիստ։
13 Մտից ի տուն քո պատարագօք, տաց
քեզ զուխտս իմ զոր խոստացան քեզ
14 շրթունք իմ, Զոր բերան իմ խօսեցաւ
15 ի նեղութեան։ Զողջակէզս ուղղալիցս
մատուցից քեզ խոյովք եւ խնկովք, եւ
քեզ մատուցից զուարակս եւ նոխազս[1]
16 Եկայք լուարուք ինձ, եւ պատմեցից
ձեզ, ամենեքեան որք երկնչիք յԱստու-
17 ծոյ, զոր ինչ արար անձին իմոյ։ Առ
նա բերանով իմով կարդացի, եւ բարձր
18 արարի զնա լեզուաւ իմով։ Զմեղս թէ
տեսանէի ի սրտի իմում, մի՛ լուիցէ ինձ
19 Տէր։ Վասն այսորիկ լուաւ Աստուած,
եւ նայեցաւ ի ձայն խնդրուածոյ իմոյ։
20 Օրհնեալ է Աստուած որ ոչ ի բացեայ
արար զաղօթս իմ, եւ ոչ զողորմու-
թիւն իւր յինէն։

## ՍԱՂՄՈՍ ԿԶ (ԿԷ)

1 [2]Ի կատարած ընդ օրհնութիւն. Սաղ-
մոս երգոյ։"

2 Աստուած, ողորմեա մեզ եւ օրհնեա
զմեզ, երեւեցո զերեսս քո ի մեզ, [3]եւ
3 ողորմեա մեզ", Ճանաչել յերկրի զճա-
նապարհս քո, յազգիս ամենայն զփրկու-
4 թիւնս քո։ Խոստովան եղիցին առ քեզ
ժողովուրդք, Աստուած, խոստովան ե-
ղիցին առ քեզ ժողովուրդք ամենայն։
5 Ուրախ եղիցին եւ ցնծասցեն ազինք,
զի դու դատիս զժողովուրդս յուղղու-
թիւն, եւ ազգաց երկրի դու առաջնոր-
6 դես[1]։ Խոստովան եղիցին առ քեզ ժողո-
վուրդք, Աստուած, գոհասցին զքեն ժողո-
7 վուրդք ամենայն։ Երկիր ետ զպտուղ իւր,
եւ օրհնեսցէ զմեզ Աստուած, Աստուած
8 մեր։ Աստուած մեր օրհնեսցէ զմեզ, եւ
ի նմանէ երկիցեն ամենայն ծագք երկրի։

## ՍԱՄՂՈՍ ԿԷ (ԿԸ)

1 [4]Ի կատարած. Սաղմոս Դաւթի"

2 Յարիցէ Աստուած եւ ցրուեսցին ամե-
նայն թշնամիք նորա, փախիցեն ատե-
3 լիք նորա յերեսաց նորա։ Որպէս պա-
կասէ ծուխ՝ պակասեսցին. որպէս հալի
մոմ առաջի հրոյ՝ այնպէս կորիցեն մե-
4 ղաւորք յերեսաց Աստուծոյ։ Արդարք
ուրախ եղիցին՝ ցնծասցեն առաջի նո-
րա, եւ զուարճասցին յուրախութեան
իւրեանց։
5 Օրհնեցէք զԱստուած, եւ սաղմոս ա-
ասցէք անուան նորա. ճանապարհ ա-
րարէք այնմիկ որ [5]նստի ընդ արեւ-
մուտս, եւ Տէր է անուն նորա. ցնծաս-
ցեն առաջի նորա, եւ խռովեսցին յե-
6 րեսաց նորա"։ Որ հայրն է որբոց եւ
դատաւոր այրեաց, Աստուած ի տեղւոջ
7 սրբութեան իւրում։ Աստուած բնակե-
ցուցանէ զմիակրօնս ի տան, եւ հանէ
զկապեալս [6]քաջութեամբ իւրով, նոյն-
պէս եւ զդառնացօղս որ բնակեալ են ի
գերեզմանս"։
8 Աստուած, ընդ ելանել քեզ առաջի
ժողովրդեան քո, ընդ անցանել քեզ ընդ
9 անապատ,[1] Երկիր շարժեցաւ, քանզի
եւ երկինք ցօղեցին յերեսաց Աստուծոյ,
[7]ի Սինէ առաջի" Աստուծոյ Իսրայելի։
10 Անձրեւ [8]կամաց պատրաստեցեր, Աս-
տուած, ժառանգութեան քում. թէ-
պէտեւ հիւանդացաւ՝ սակայն դու հաս-
11 տատեցեր զնա։ [9]Եւ գազանք" քո բնա-
կեսցեն ի նմա. պատրաստ արարեր քաղց-
րութեամբ քով աղքատի, Աստուած։
12 Տէր տացէ զբանս ոյք աւետարանեն զօրու-
13 թեամբ բազմաւ։ [10]Թագաւոր զօրութեանց

[1]Եբրայեցին յաւելու, Հանգիստ։ [2]Եբր. Առ գլուխ երաժշտացն. ի վերայ Նկինոթայ. Սաղմոս, երգ։ [3]Եբր. Հանգիստ

[4]Եբր. Առ գլուխ երաժշտացն, Սաղմոս Դաւթի. երգ։ [5]Եբր. Հեծեալն է յանապատս, Տէր է անուն նորա. ցնծացէք առաջի նորա [6]Եբր. ի յաջողութիւն. սակայն ապստամբք բնակեն ի ցամաքի. [7]Եբր. Այս Սինայ [illegible] յերեսաց Աստուծոյ [8]Կամ, առատ [9]Կամ, ժողովուրդ [10]Եբր. Թագաւորք զօրաց փախչին, փախչին, եւ կին բնակեալ ի տան բաժանէ զաւարն։

սիրելւոյ, զգեղեցկութիւն տան քո բա-
14 ժանել յաւարի״ ։ Թէպէտ եւ ննջես-
ջիք ի մէջ վիճակաց, թեւք աղաւնւոյ
արծաթապատ, եւ թիկնամէջք նորա ի
15 գոյն ոսկւոյ ։ [1]Ի զատուցանել երկնաւորին
զթագաւորս ի վերայ նորա, ձիւնաս-
ցին՝ ի Սաղմոն ։
16 Լեառն Աստուծոյ լեառն [2]պարարտ,
լեառն մածեալ եւ լեառն պարարտ,
17 Եւ զի՞նչ կարծէք, լերինք հաստա-
տեալք״, լեառն՝ ընդ որ հաճեցաւ Ա-
ստուած բնակել ի նմա . քանզի եւ Տէր
իսկ բնակեսցէ ի նմա ի սպառ ։
18 Կառք Աստուծոյ բիւրապատիկք, հա-
զարք ուղղիչք, եւ Տէր ի նոսա ի Սինէ
19 սրբութենէ իւրմէ ։ Ել ի բարձունս՝ գե-
րեաց զգերութիւն . առ աւար, բաշ-
խեաց պարգեւս եւ ետ որդւոց մարդ-
կան . [3]քանզի թերահաւատից եւս բնա-
կեալ եղիցին ի նմա. Տէր Աստուած օրհ-
20 նեալ״. Օրհնեալ Տէր զօրհանապազ, [4]ա-
ռաջնորդեսցէ մեզ Աստուած փրկիչ մեր״ ։
21 Աստուած մեր Աստուած կենարար, եւ
22 ի Տեառնէ ելք մահու ։ Բայց սակայն
Աստուած փշրեսցէ զգլուխս թշնամեաց
իւրոց, եւ զհերսն կարճոլլս որ գնան
23 յանօրէնութեան իւրեանց ։ Ասաց Տէր,
[5]Ի խորոց անդնդոց դարձուցից, եւ ի
միջոյ ժանեաց զիմն ի գուբս կորզեցից״ ։
24 Որպէս թաթասցի ոտն քո յարեան, եւ լե-
զուք շանց քոց յարենէ թշնամեաց քոց ։
25 Երեւեցան գնացք քո, Աստուած,
գնացք Աստուծոյ թագաւորին [6]մերոյ
26 սրբոյ ։ Կանխեցին իշխանք հանել զօրհ-
նութիւն, ի մէջ գուսանաց եւ զմչաց״ ։
27 Յեկեղեցիս օրհնեցէք զԱստուած, եւ
28 զՏէր՝ յաղբերացն Իսրայելի ։ Անդ Բենիա-
մին՝ ի տղայութեան [7]զարմանալի, իշ-
խանք Յուդայ առաջնորդք նոցա՝ իշխանք
Զաբուղոնի եւ իշխանք Նեփթաղիմայ ։
29 [8]Հրամայեա, Աստուած, զօրութեամբ
քով, զօրացո״ զայս զոր հաստատեցեր ի
30 մեզ ։ Ի տաճարէ քումմէ յԵրուսաղեմէ
քեզ մատուսցեն թագաւորք զպատա-
31 րագս ։ Սաստեա ի գազան եղեգան, ի
ժողովս զուարակաց եւ ի զաստ երինջոց .
խառնեսցին այնոքիկ որ ընտրեալ են ար-
ծաթով, ցրուեա զհեթանոսս ոյք կա-
32 մին ընդ պատերազմ ։ Եկեսցեն [9]հրեշ-
տակք յԵգիպտոսէ, Հնդիկք յառաջա-
գոյն ձեռնատու լիցին״ առ Աստուած ։
33 Թագաւորութիւնք երկրի, օրհնեցէք
զԱստուած, եւ սաղմոս ասացէք [10]Տեառն.
34 Ծնծղայք՝ արարէք այնմիկ, որ նստի
յերկինս երկնից ընդ արեւելս״. ահա տա-
35 ցէ զձայն իւր՝ զձայն զօրութեան ։ Եւ
տուք զփառս Աստուծոյ . ի վերայ Իս-
րայելի մեծվայելչութիւն նորա, եւ զօրու-
36 թիւն նորա մինչեւ յամպս երկնից ։ Սքան-
չելի է Աստուած ի վերայ սրբոց իւրոց,
Աստուած Իսրայելի . նա տացէ զօրու-
թիւն հաստատութեան ժողովրդեան իւ-
րոյ . օրհնեալ է Աստուած ։

## ՍԱՂՄՈՍ ԿԸ (ԿԹ)

1 [11]Ի կատարած . վասն զառանցելոց״ Սաղ-
մոս Դաւթի ։

2 Կեցո զիս, Աստուած, զի հասին ջուրք
յանձն իմ, ընկլայ ես ի խորս անդնդոց,
3 ուր ոչ գոյ ինձ հանգիստ ։ Եկի ես ի
խորս ծովու, եւ շրջանք ընկղմեցին զիս ։
4 Վաստակեցի ես առ աղաղակել, կերկե-
րեցաւ կոկորդ իմ . նուաղեցին աչք իմ,
առ յուսալ ինձ [12]առ Տէր Աստուած״ իմ ։
5 Բազում եղեն քան զհերս գլխոյ իմոյ
ոյք ատէին զիս ի տարապարտուց . զօ-
րացան չէս թշնամիք իմ եւ ատելիք իմ
ի նանիր . ինչ զոր ոչ յափշտակեալ էր՝
տուժէի նոցա ։
6 Աստուած, դու ծանեար զանզգամու-
թիւն իմ, եւ յանցանք իմ ի քէն ոչ ծած-
7 կեցան ։ Մի՛ ամաչեսցեն վասն իմ որ
համբերեն քեզ, Տէր, Տէր զօրութեանց .
մի՛ պատկառեսցեն վասն իմ ոյք խնդրեն
8 զքեզ, Աստուած Իսրայելի ։ Վասն քո
համբերի նախատանաց, եւ ծածկեաց
9 ամօթ զերեսս իմ ։ Օտար եղէ ես յեղ-
բարց իմոց, եւ հեւր որդւոց մօր իմոյ ։

---

[1]Եբր. Ի ցրուել Ամենակալին զթագաւորս ի նմա, սպիտակացաւ որպէս ձիւն [2]Եբր. Բասան, լեառն գագաթանց, լեառն Բասանու (17) Եւ զի՞ զշարիք, լերինք գագաթանց [3]Եբր. թերահաւատից եւս, ի բնակել Տեառն Աստուծոյ [4]Եբր. եթէ դիցի բեռն ի վերայ մեր, Աստուած փրկութիւն մեր է ։ Հանգիստ, [5]Եբր. Ի Բասանէ դարձուցից, ի խորոց անդնդոց դարձուցից [6]Եբր. իմոյ ի սրբութեան ։ (26) Յառաջեցին երգեցիկք, նուագածուք զկնի, ի միջի կուսանաց որ հարկանէին թմբուկ [7]Եբր. որ իշխէ նոցա [8]Եբր. Հրամայեաց Աստուած քո զզօրութիւն քո, զօրացո, Աստուած

[9]Եբր. մեծամեծք յԵգիպտոսէ. Եթովպիա փութասցի ձգել զձեռս իւր [10]Եբր. Տեառն, Հանգիստ, (34) Որ նստին յերկինս երկնից ի յաւիտենից [11]Եբր. Առ գլուխ երաժշտացն . ի վերայ Նուշաննիմի . [12]Եբր. յԱստուած

10 Նախանձ տան քո եկեր զիս, նախատինք
նախատչաց քոց անկան ի վերայ իմ։
11 Խոնարհեցուցի պահօք զանձն իմ, եւ
12 եղեն ինձ այն նախատինք։ Արարի զհան-
դերձս իմ քուրձ, եւ եղէ յառակ նոցա։
13 Զինէն խորհէին որք նստէին առ դրունս,
զիս այսն առնէին որք ըմպէին գինի։
14 Ես յաղօթս կայի առ քեզ, Տէր, ի
ժամանակի ընդունելի. Աստուած, ի բա-
զում ողորմութեան քում լուր ինձ, ի
15 ճշմարտութիւն փրկութեան քո։ Ապրե-
ցո զիս ի կաւոյ զի մի՛ ընկլայց, ապ-
րեցայց ես յատելեաց իմոց եւ ի խորոց
16 ջուրց բազմաց։ Մի՛ ընկլցեն զիս պտոյտք
ջուրց, եւ մի՛ ընկղմեսցեն զիս անդունդք
խորոց. եւ ջրհոր մի՛ կափուսցէ զբերան
17 իւր ի վերայ իմ։ Լուր ինձ, Տէր, զի քաղցր
է ողորմութիւն քո, ըստ բազում գթու-
18 թեան քում հայեաց յիս. Եւ մի՛ դարձու-
ցաներ զերեսս քո ի ծառայէ քումմէ,
զի նեղեալ եմ ես. վաղվաղակի լուր ինձ։
19 Հայեա յանձն իմ եւ փրկեա զիս, եւ
վասն թշնամեաց իմոց ապրեցո զիս։
20 Զի դու գիտես զնախատինս իմ, զա-
մօթ իմ եւ զպատկառանս իմ. առաջի
21 քո են ամենայն նեղիչք անձին իմոյ։ Նա-
խատանաց համբերեր սիրտ իմ եւ թշուա-
ռութեան. ակն ունէի թէ ո՛ տրտմեսցի
ընդ իս, եւ ոչ ոք էր. եւ մխիթարիչ
22 ինձ ոք ոչ գտաւ։ Եդուն ի կերակուր
ինձ լեղի, եւ ի ծարաւ իմ արբուցին
ինձ քացախ։
23 Եղիցին սեղանք նոցա առաջի նոցա
յորոգայթ, [1]ի հատուցումն եւ ի՛ գայ-
24 թակղութիւն։ Խաւարեսցին աչք նոցա
զի մի՛ տեսցեն, եւ զթիկունս նոցա հա-
25 նապազ կորացո։ Արկցես ի վերայ նոցա
զբարկութիւն քո, եւ սրտմտութիւն բար-
26 կութեան քո հասցէ ի վերայ նոցա։ Ե-
ղիցին բնակութիւնք նոցա աւերակ, եւ
ի յարկս նոցա մի՛ ոք իցէ որ բնակիցէ։
27 Զի զոր դուն հարեր՝ հալածեցին, եւ ի
28 վէրս ցաւոց իմոց յաւելին։ Դիր զմեղս
ի վերայ մեղաց նոցա, զի մի՛ մտցեն
29 յարդարութիւն քո։ Ջնջեսցին նոքա ի
դպրութենէ քումմէ կենաց, եւ ընդ ար-
դարս քո մի՛ գրեսցին։
30 Աղքատ եւ ցաւած եմ ես, փրկու-
թիւն քո, Աստուած, ընկալցի զիս։
31 Օրհնեցից զանուն Աստուծոյ իմոյ օրհ-
նութեամբ, եւ բարձր արարից զնա գո-
32 վութեամբ։ Հաճոյ եղիցի Աստուծոյ քան
զորթ մատաղ, որ բերէ զեղջիւրս եւ
33 զկճղակս։ Տեսցեն աղքատք եւ ուրախ
եղիցին. խնդրեցէք զԱստուած եւ կեց-
34 ցեն անձինք ձեր։ Զի լուաւ Տէր տնանկ-
կաց, եւ զկապեալս իւր ոչ արհամար-
հեաց։
35 Օրհնեսցեն զնա երկինք եւ երկիր,
36 ծով եւ ամենայն որ զեռայ ի նոսա։ Աս-
տուած փրկէ զՍիոն, եւ շինեսցին քա-
ղաքք Հրէաստանի. [2]շինեսցեն, բնակես-
37 ցեն եւ ժառանգեսցեն ի նմա։ Զաւակ
ծառայից քոց հաստատեսցի անդ, եւ որք
սիրեն զանուն քո բնակեսցեն ի նմա։

## ՍԱՂՄՈՍ ԿԹ (Հ)

1 [3]Ի կատարած. Սաղմոս Դաւթի՛ առ յի-
շատակի փրկելոյ զնա Տեառն։"

2 Աստուած, յօգնել ինձ նայեա, եւ, Տէր,
3 յընկերել ինձ փութա։ Ամաչեսցեն եւ
յամօթ լիցին որ խնդրէին զանձն իմ,
դարձցին յետս եւ ամաչեսցեն որք խոր-
4 հէին ինձ չար։ Դարձցին առժամայն ա-
մաչեցեալք՝ որ ասէին ինձ Վաշ վաշ։
5 Ցնծասցեն եւ ուրախ լիցին ի քեզ ա-
մենեքեան որք խնդրեն զքեզ, Տէր. ա-
սասցեն յամենայն ժամ, [4]Մեծ է" Աս-
տուած, որք սիրեն զփրկութիւնս քո։
6 Ես աղքատ եւ տնանկ եմ, Աստուած,
[5]օգնեա ինձ". օգնական եւ փրկիչ իմ ես
դու, Տէր իմ, մի՛ յամենար։

## ՍԱՂՄՈՍ Հ (ՀԱ)

1 [2]Ի կատարած. Սաղմոս Դաւթի, որդւոցն
Յովնադաբայ՝ եւ առաջին գերութեանն։"

2 Ի քեզ, Տէր, յուսացայ, մի՛ ամաչեցից
յաւիտեան. յարդարութեան քում փրկեա
զիս եւ ապրեցո զիս. խոնարհեցո առ
3 իս զունկն քո, եւ կեցո զիս։ Լեր իմ,
[2]Աստուած, ապաւէն եւ տեղի ամուր
կեցուցանել զիս. զի հաստատութիւն
4 իմ եւ ապաւէն իմ դու ես։ Աստուած
իմ, փրկեա զիս ի ձեռաց մեղաւորի, ի
5 ձեռաց անօրինի եւ անիրաւի։ Դու ես
համբերութիւն իմ, Տէր, Տէր, յոյս իմ
6 ի մանկութենէ իմմէ։ Ի քեզ հաստատե-
ցայ ես յարգանդէ, յորովայնէ մօր իմոյ

[1] Եբր. ի խաղաղութեան

[2] Եբր. պակասէ [3] Եբր. Առ գլուխ երաժշտացն. Դաւթի՛ առ յիշատակէ։ [4] Եբր. Մեծասցի [5] Եբր. փութա ինձ օգնել

դու ես ապաւէն իմ, եւ [1]առ ի քէն է
7 օգնութիւն՝՝ իմ յամենայն ժամ։ Որպէս
զի՛ նշանակ եղէ ես բազմաց, եւ դու
8 օգնական իմ եւ հզօրիչ իմ։ Լցցի բե-
րան իմ [2]գովութեամբ, որպէս օրհնե-
ցից զփառս քո, զօրհանապազ զմեծ-
9 վայելչութիւնս քո՝՝։ Մի՛ ընկենուր զիս,
Տէր, ի ժամանակի ծերութեան, ի պա-
կասել զօրութեան իմոյ մի՛ թողուր զիս։
10 Ասացին թշնամիք իմ ինձ, եւ որք պա-
չարեցին զանձն իմ, խորհեցան ի միա-
11 սին, Եւ ասացին, Աստուած եթող զնա՝
հալածեցէք եւ հասէք նմա, զի ոչ
12 ոք է որ փրկէ զնա։ Աստուած իմ, մի՛
հեռի առներ յինէն, եւ, Աստուած, յօգ-
13 նել ինձ նայեաց։ Ամաչեսցեն եւ պա-
կասեսցին որ չարախօս կային զանձնէ
իմմէ, զգեցցին զամօթ եւ զպատկա-
ռանս որք խնդրէին ինձ չար։
14 Ես յամենայն ժամ յուսացայց, եւ յա-
15 ւելից յօրհնութիւնս քո։ Բերան իմ
պատմեսցէ զարդարութիւնս քո, զօր-
հանապազ [3]զգովութիւնս քո. որպէս
ոչ թէ խարդախութիւն ինչ գիտէի ես
16 գպրութեան. Այլ մտից՝՝ ի զօրութիւնս
Տեառն. եւ, Տէր, յիշեցի զարդարու-
17 թիւնս քո միայն։ Աստուած իմ, ու-
սուցեր զիս ի մանկութենէ իմմէ, եւ
ցարդ եւս պատմեցից [4]զարդարութիւնս
18 քո։ Մինչեւ յալեւորել եւ ի ծերանալ,
Աստուած իմ, մի՛ թողուր զիս. մինչեւ
[5]պատմեսցի բազուկ քո ազգի ամենայնի որ
19 գալոցն է։ Զզօրութիւնս քո եւ զարդա-
րութիւնս՝՝ մինչ ի բարձունս, զոր արարեր
մեծամեծս. Աստուած, ո՞ նմանէ քեզ։
20 Որչափ ցուցեր ինձ նեղութիւն բա-
զում եւ չարչարանս, դարձեալ մխիթա-
րեցեր զիս, եւ ի խորոց անդնդոց երկ-
21 րէ հաներ զիս։ Յաճախեցեր [6]ի զօրու-
թիւնս քո՝՝, դարձար եւ մխիթարեցեր
զիս. [7]եւ ի խորոց երկրէ միւսանգամ
22 հաներ զիս։՝՝ Արդ եւ ես խոստովան ե-
ղէց քեզ ի պատրաստութիւն սաղմո-
սաց, ճշմարիտդ Աստուած. սաղմոս ա-
սացից քեզ օրհնութեամբ, սուրբդ Իս-
23 րայելի։ Ցնծասցեն շրթունք իմ՝ յոր-
ժամ սաղմոս ասիցեմ քեզ, եւ անձն իմ
24 զոր եւ փրկեցեր։ Եւս եւ լեզու իմ զօր-
հանապազ խօսեսցի զարդարութիւնս քո.
[8]ի ժամանակի՛ որպէս՝՝ յամօթ լիցին եւ
ամաչեսցեն որք խորհէին ինձ չար։

## ՍԱՂՄՈՍ ՀԱ (ՀԲ)

1 [9]Ի Սողոմոն Սաղմոս։՝՝

2 Աստուած, զիրաւունս քո՝ արքայի
տուր, եւ զարդարութիւնս քո որդւոյ
թագաւորի, դատել զժողովուրդս քո
արդարութեամբ, եւ զաղքատս քո ի-
3 րաւամբք։ Առցեն լերինք զխաղաղու-
թիւն ժողովրդեան, եւ բլուրք զարդա-
4 րութիւն։ Իրաւ արասցէ աղքատաց ժո-
ղովրդեան, եւ կեցուսցէ զորդիս տնան-
կաց, եւ խոնարհեցուսցէ զամբաստա-
5 ւանս։ [10]Կացցէ եւ մնասցէ ընդ արեւու,
յառաջ քան զլուսին՝՝ ազգէ մինչեւ յազգ։
6 Իջցէ որպէս զանձրեւ ի վերայ [11]գեղման,
7 որպէս ցօղ զի ցօղէ յերկիր։ Ծագեսցի
յաւուրս նորա արդարութիւն՝ բազում
խաղաղութիւն, մինչեւ կատարեսցի լու-
8 սին։ Տիրեսցէ նա ի ծովէ մինչեւ ի ծով,
9 ի գետոց մինչեւ ի ծագս աշխարհի։ Առա-
ջի նորա [12]նախ Հնդիկք՝՝ անկցին, եւ
10 թշնամիք նորա հող կերիցեն։ Թագա-
ւորք Թարսսի եւ կղզեաց պատարագս
մատուսցեն նմա. թագաւորք [13]Արաբայ եւ
11 Սաբայ պատարագս բերցեն նմա։ Երկիր
պագցեն նմա ամենայն թագաւորք երկ-
րի, եւ ամենայն ազգք ծառայեսցեն նմա։
12 Զի փրկեաց զաղքատն [14]ի հզօրէ, զաղ-
քատն եւ զտնանկն որոյ ոչ է իւր օգ-
13 նական։ Անխայեսցէ նա յաղքատն եւ
ի տնանկն, եւ զանձինս տնանկաց կե-
14 ցուսցէ. Ի վաշխից չարաց փրկեսցէ զան-
ձինս նոցա. պատուական է [15]անուն նո-
15 րա առաջի նոցա՝՝։ Կեցցէ եւ տացի նմա
յոսկւոյն [13]Արաբացւոց. յաղօթս կացցեն
[16]առ նա՝՝ յամենայն ժամ, եւ զօրհանա-
16 պազ օրհնեսցեն զնա։ Եղիցի [17]հաստա-
տութիւն ընդ ամենայն երկիր, եւ ի վե-
րայ գլխոց լերանց. [18]բարձրասցի քան՝՝
զԼիբանան պտուղ նորա, ծաղկեսցեն [19]ի
քաղաքի Տեառն՝՝ որպէս խոտ երկրի։

---

[1]Ոմն. ի քեզ է գովութիւն [2]Ոմն. գովութեամբ քո, զօրհանապազ փառօք քո [3]Ոմն. զփըրկութիւն քո. զի ոչ գիտացի զհամար նոցա։ (16)Մտից [4]Ոմն. զսքանչելիս [5]Ոմն. պատմեցից զբազուկ քո ազգի, զզօրութիւն քո ամենայնի որ գալոցն է։(19)Արդարութիւն քո, Աստուած, [6]Ոմն. զմեծութիւն իմ [7]Ոմն. [illegible]

[8]Ոմն. զի [9]Ոմն. Վասն Սողոմոնի [10]Ոմն. Երկիցեն ի քէն մինչ մնան արեւ եւ լուսին [11]Կամ, խառն հնձելոյ [12]Ոմն. բնակիչք անապատի [13]Ոմն. Շաբայ [14]Ոմն. յաղաղակէն նորա [15]Ոմն. արիւն նոցա առաջի նորա [16]Ոմն. վասն նորա [17]Ոմն. առատութիւն ցորենոյ [18]Ոմն. շարժեսցի իբրեւ [19]Ոմն. ի քաղաքէ

17 Եղիցի անուն [1]Տեառն օրհնեալ յաւի-
տեան, զի յառաջ քան զարեւ է" անուն
նորա. ի նա օրհնեսցին ամենայն ազգք
երկրի, եւ ամենայն ազինք երանեսցեն
18 զնա։ Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի՛
19 որ առնէ սքանչելիս միայն. Եւ օրհնեալ
է անուն [2]սուրբ փառաց նորա յաւիտեան.
լցցի փառօք նորա ամենայն երկիր, ե-
ղիցի, եղիցի։[3]

## ՍԱՂՄՈՍ ՀԲ (ՀԳ)

*Սաղմոս Ասափայ։*

1 Որպէս զի՛ բարի է Աստուած՝ Իսրայե-
2 լի, եւ ոյք ուղիղ են սրտիւք։ Բայց զի
իմ փոքր մի եւս սասանեալ էին ոտք, սա-
կաւիկ մի եւ գայթագղեալ էին գնացք իմ։
3 Նախանձեցայ ես ընդ անօրէնս՝ զխաղա-
ղութիւն մեղաւորաց որպէս տեսանէի.
4 Զի [4]ոչ գոյր վրէպ մահու" նոցա. հաստա-
5 տուն [5]են տանջանք" նոցա։ Ի վաստակս
մարդկան չեն նոքա, եւ ընդ մարդկան
6 ոչ տանջեսցին։ Վասն այսորիկ կալաւ
զնոսա ամբարտաւանութիւն, արկին
զիւրեամբք զամպարշտութիւն եւ զա-
7 նիրաւութիւն իւրեանց։ Ելցեն որպէս
ի ճարպոյ [6]անիրաւութիւնք նոցա, զի
գնացին նոքա ըստ խորհրդոց սրտից իւ-
8 րեանց։ Խորհեցան" եւ խօսեցան չարու-
թեամբ, զանիրաւութիւն ի բարձունս
9 խօսեցան։ Եդին յերկինս զբերանս իւ-
րեանց, եւ զլեզուս իւրեանց ածէին
10 զերկրաւ։ Վասն այսորիկ ժողովուրդ իմ
դարձցի այսրէն, եւ [7]աւուրք իմ լի կա-
11 տարեալ գտցին" ի նոսա։ Ասացին՝ Զիա՞րդ
գիտաց Աստուած, կամ գուցէ՞ արդեւք
12 գիտութիւն առ ի Բարձրելոյն։ Ահա մե-
ղաւորք են եւ յաջողեալ է նոցա, կամ
13 եւ ունին զմեծութիւն աշխարհի։ Ա-
սացի, Ի զուր ուրեմն արդարացուցի
զսիրտ իմ. լուացայ սրբութեամբ զձեռս
14 իմ. Եւ եղէ ես խոշտանգեալ զօրհանա-
պազ. եւ կշտամբանք իմ ընդ առաւօտս։
15 [8]Թէպէտ եւ" ասէի, թէ այսպէս պատ-
մեցից, անհաւատ եղէ յազգ որդւոց քոց [9]ա-
16 րոց եւ ուխտեցի"։ Ի մտի եդի [10]թէ ծա-
17 նեայն եւ այս ջան է առաջի իմ. Մին-
չեւ մտից ի սրբութիւնն Աստուծոյ եւ ի
18 միտ առից զկատարած նոցա։ Սակայն
[11]վասն նենգութեան նոցա տարագիր ա-
րարեր զնոսա, եւ կործանեցեր զնոսա
19 յամբարտաւանութեան իւրեանց"։ Իսկ
զիա՞րդ եղեն յաւեր յանկարծակի, սա-
տակեցան, սպառեցան, կորեան [12]վասն
20 անօրէնութեան իւրեանց". Եւ եղեն որ-
պէս երազք զարթուցելոց. Տէր, [13]ի քա-
ղաքի քում" զպատկերս նոցա անար-
գեսցես։
21 Զի հուր բորբոքեցաւ ի սրտի իմում, եւ
22 երիկամունք իմ այլայլեցան։ Ես ար-
համարհեալ եղէ եւ ոչ գիտացի, որպէս
23 զանասուն համարեցայ առաջի քո։ Եւ
ես յամենայն ժամ ընդ քեզ եմ. կալար
24 զաջոյ ձեռանէ իմմէ. Ի խորհուրդս քո
առաջնորդեցեր ինձ, եւ փառօք ընկա-
25 լար զիս։ Զի՞նչ կայ իմ ընաւ յերկինս,
[14]կամ ի քէն" զի՞նչ եւս խնդրեցից յերկ-
26 րի։ Նուաղեաց սիրտ իմ եւ մարմին իմ.
Աստուած սրտի իմոյ, բաժին իմ Աս-
տուած յաւիտեան։
27 Ահաւասիկ ոյք հեռի առարին զանձինս
իւրեանց ի քէն՝ կորիցեն, սատակեցես
զամենեսեան որ ապստամբ եղեն ի քէն։
28 Ինձ մերձենալ առ Աստուած բարի է,
եւ դնել առ Տէր զյոյս իմ. [15]պատմել
զամենայն օրհնութիւնս քո ի դրունս
դստեր Սիոնի"։

## ՍԱՂՄՈՍ ՀԳ (ՀԴ)

*Իմաստութիւն Ասափայ։*

1 Ընդէ՞ր մերժեցեր, Աստուած, ի սպառ.
բարկացաւ սրտմտութիւն քո ի վերայ
2 խաշին արօտի քո։ Յիշեա զժողովուրդ
քո զոր ստացար ի սկզբանէ, փրկեցեր
զգաւազան ժառանգութեան քո. լեառն
Սիոն այս՝ ուր բնակեցեր դու ի սմա։
3 Համբարձ [16]զձեռն քո ի վերայ ամբար-
տաւանութեան նոցա" ի սպառ. որ ինչ

[1] Եբր. Նորա յաւիտեան, զի առաջի արեգական մնասցէ [2] Յն. Եբր. գովութե [3] Եբր. ամէն եւ ամէն, (20) Կատարեցան աղօթք Դաւթի որդւոյ Յեսսեայ [4] Եբր. ոչ գոն ցաւք ի մահուան [5] Եբր. է զօրութիւն [6] Եբր. աչք նոցա. անցանեն ըստ ցնորս սրտի։ (8) Ծաղր առնեն [7] Եբր. ջուր լրութեամբ քամեսցի [8] Եբր. Եթէ [9] Եբր. նենգեալ էր [10] Եբր. գիտել զայս,

[11] Եբր. ի լպիրծս եդիր զնոսա, ետուր նոցա անկանել յաւեր [12] Եբր. յերկիւղէ [13] Կամ, ի զարթնուլ քո [14] Եբր. բաց ի քէն [15] Եբր. ի պատմել զամենայն գործս քո [16] Եբր. զգնացս քո ի վերայ աւերածոցն

անիրաւեցաւ թշնամին ի սրբութեան
4 քում։ Պարծեցան ատեալք քո ի մէջ *բա-
րեկենդանութեան քո. եդին զնշանս իւր-
5 եանց ի նշանս. [1]Եւ ինքեանք ոչ ծանեան
6 զելս ի վերուստ։ Որպէս յանտառի փայ-
տատօք կոտորեցին զդրունս նորա," ի
միասին փայտատօք եւ մրճովք կործանե-
7 ցին [2]զնա։ Այրեցին ի հուր զսրբութիւն
քո, յերկիր պղծեցին զխորան անուան քո։
8 Ասացին ի սիրտս իւրեանց ազգ նոցա ի
միասին, Եկայք լռեցուսցուք զամենայն
9 տօնս Աստուծոյ յերկրէ։ Նշանս մեք ինչ
ոչ տեսաք, եւ ոչ եւս գուցէ մարգարէ.
եւ [3]զմեզ ինչ ոք ոչ ճանաչիցէ"։
10 Մինչեւ յե՞րբ, Աստուած, նախատէ
թշնամին, բարկացուցանէ հակառակորդն
11 զանուն սուրբ քո։ Ընդէ՞ր դարձուցա-
նես զձեռն քո, եւ զաջ քո ի միջոյ ծո-
12 ցոյ քումմէ ի սպառ։ Աստուած, թա-
գաւոր մեր յառաջ քան զյաւիտեանս,
որ արարեր զփրկութիւն ի մէջ երկրի։
13 Դու [4]հաստատեցեր զօրութեամբ քով
զծով, դու խորտակեցեր զգլուխս վիշա-
14 պաց ի վերայ ջուրց։ Դու փշրեցեր զգլուխս
Վիշապին, եւ ետուր զնա կերակուր [5]զօ-
15 րացն Հնդկաց"։ Դու բղխեցուցեր զաղ-
բերս եւ զվտակս. դու ցամաքեցուցեր
16 զգետս ստապիկս։ Քո է տիւ եւ քո է
գիշեր, զլոյս եւ զարեւ դու հաստատե-
17 ցեր։ Եւ դու հաստատեցեր զամենայն
սահմանս երկրի. զդարուն եւ զամառն
դու ստեղծեր։
18 Այս յուշ լիցի քեզ՝ զի թշնամին նա-
խատեաց զՏէր, ժողովուրդ անզգամ
19 բարկացոյց զանուն սուրբ քո։ Մի՛ մատ-
ներ գազանաց զանձն [6]որ խոստովան
առնի առ քեզ", եւ զանձինս տնանկաց
20 քոց մի՛ մոռանար ի սպառ։ Հայեաց յուխտ
քո, զի լցան [7]տունք ախշելոց յերկրի
21 անիրաւութեամբ"։ Մի՛ դարձցի տնանկն
ամաչեցեալ, այլ աղքատն եւ տնանկ
22 օրհնեսցեն զանուն [2]սուրբ քո. Արի,
Աստուած, եւ դատեա զդատաստանս
քո. յիշեա զնախատինս որ յանզգամէն
23 զօրհանապազ։ Մի՛ մոռանար զձայն

*Եբր. ժողովրդեան [1]Եբր. Ճանաչի որպէս որ բառնայն ի վեր ի վերայ ծառոց անտառի փայտատս. (6) Եւ արդ զքանդակս նորա [2]Յ՝ Եբր. [illegible] [3]Եբր. չիք որ ընդ մեզ որ գիտիցէ մինչեւ ցերբ [4]Եբր. պատառեցեր [5]Եբր. ժողովրդոց բնակելոց յանապատի [6]Եբր. տատրակի քո [7]Եբր. անկիւք խաւարինք երկրի բնակութեամբք անիրաւութեան

[8]պաշտօնէից քոց. ամբարտաւանութիւն
ատելեաց քոց [9]վերասցի հանապազ։

ՍԱՂՄՈՍ ՀԴ (ՀԵ)

1 [10]Ի կատարած. Մի՛ ապականեր. Սաղմոս
օրհնութեան Ասափայ։

2 Խոստովան եղիցուք առ քեզ, Աս-
տուած, խոստովան եղիցուք եւ [11]կար-
դասցուք զանուն քո. պատմեցից" զա-
3 մենայն սքանչելիս քո։ Յորժամ ժամ
4 առից՝ ես ուղիղ դատեցայց։ Մաշեցաւ
երկիր եւ ամենայն բնակիչք նորա, ես
հաստատեցի զսիւնս նորա։[12]
5 Ասացի անօրինաց՝ թէ Մի՛ անօրինիք.
եւ մեղաւորաց՝ թէ Մի՛ բարձրացուցանէք
6 զեղջիւրս ձեր։ Մի՛ համբառնայք ի բար-
ձունս զեղջիւրս ձեր, եւ մի՛ խօսիք [13]զԱս-
7 տուծոյ անիրաւութիւն"։ Զի ոչ յարե-
ւելից եւ ոչ յարեւմտից եւ ոչ յանապա-
8 տէ [14]լերանց, Այլ Աստուած դատաւոր
է, զայս խոնարհ առնէ, եւ զայն բարձ-
9 րացուցանէ։ Բաժակ ի ձեռին Տեառն
գինի լի անապակ արբեալ, եւ [15]խոնար-
հեցոյց յայսմանէ յայս. սակայն մրուր
նորա ոչ սպառեցի", եւ արբցեն զնա
ամենայն մեղաւորք երկրի։
10 Ես ցնծացայց յաւիտեան, սաղմոս ա-
11 սացից Աստուծոյ Յակոբայ։ Զամենայն
եղջիւրս մեղաւորաց [16]փշրեսցես, եւ
բարձր եղիցի եղջիւր արդարոյ։

ՍԱՂՄՈՍ ՀԵ (ՀԶ)

1 [17]Ի կատարած ընդ օրհնութիւնս. Սաղ-
մոս Ասափայ. երգ առ Ասորեստանեայսն"

2 Յայտնի է [18]ի Հրէաստանի Աստուած", եւ
3 յԻսրայէլ մեծ է անուն նորա։ Եղեւ
[19]խաղաղութիւն տեղի" նորա, եւ բնա-
4 կութիւն նորա ի Սիոն։ Անդ խորտա-
կեաց Տէր զզօրութիւն աղեղանց, զվէն՝
5 զսուր եւ զճակատամարտ։[12] Լուսատու
ես դու սքանչելապէս [20]լերանցն յաւի-
6 տենից. Խռովեցան ամենեքեան որ ան-
միտ" են սրտիւք. ննջեցին զքունս իւ-

[8]Եբր. թշնամեաց [9]Եբր. բարձրանայ [10]Եբր. Առ գլուխ երաժշտացն [11]Եբր. մերձ է անուն քո. պատմեն [12]Եբր—յեւյեն յ—ել—, Համբիտ։ [13]Եբր. պարանոցաւ գոռոզութեան [14]Եբր. իցէ բարձրանալ [15]Եբր. հեղու ի նմանէ. և զմրուր նորա քամեսցեն [16]Եբր. փշրեցից [17]Եբր. Առ գլուխ երաժշտացն. ի վերայ նեգինոթայ, Սաղմոս Ասափայ, երգ։ [18]Եբր. Աստուած ի Յուդա [19]Եբր. ի Սաղէմ խորան [20]Եբր. քան զլերինս յափշտակութեան։ (6) Կողոպտեցան որ զօրեղ

րեանց եւ ինչ ոչ գտին ամենայն արք
7 ի մեծութեան ձեռաց իւրեանց։ Ի սաս-
տէ քումմէ, Աստուած Յակոբայ, [1]ննջե-
8 ցին, եւ որք հեծեալ էին ի ձիս՚՚։ Դու
ահաւոր ես, եւ ո՞վ կարէ կալ առաջի
9 [2]քո. Որպէս երեւեցար դու յերկնից,
յայտնի եղեւ բարկութիւն քո՚՚. երկիր
10 երկեաւ եւ սարսեաց։ Ընդ յառնելն Ա-
ստուծոյ ի դատաստան՝ ապրեցուցա-
11 նել զամենայն հեզս [3]երկրի։ Խորհուրդ
մարդկան խոստովան առնին առ քեզ,
եւ ծածկեալք իմաստութեամբ օրհնես-
12 ցեն զքեզ։՚՚ Ուխտս դիք եւ կատարե-
ցէք Տեառն Աստուծոյ [4]մերոյ ամենե-
քեան որ շուրջ էք զնովաւ. մատուցէք
13 պատարագս Ահաւորին։ Ո քաղէ զհո-
գիս իշխանաց, ահաւոր է նա քան զա-
մենայն թագաւորս երկրի։

## ՍԱՂՄՈՍ ՀԶ (ՀԷ)

1 [5]Ի կատարած. վասն Իդիթունայ. Սաղ-
մոս Ասափայ։՚՚

2 Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի, ձայ-
նիւ իմով առ Աստուած, եւ նայեցաւ
3 առ իս։ Յաւուր նեղութեան իմոյ զԱս-
տուած խնդրեցի [6]ձեռօք իմովք, ի գի-
շերի առաջի նորա, եւ ոչ խաբեցայ՚՚.
4 ոչ կամէր մխիթարել անձն իմ։ Յիշեցի
զԱստուած եւ [7]ուրախ եղէ՚՚. հոգայի եւ
5 նուաղէր յիս հոգի իմ։ Հանգիստ։ Ժա-
մանեցին պահուց աչք իմ, խռովեցայ
6 եւ ոչ խօսեցայ։ Խորհեցայ զաւուրսն
զառաջինս, եւ զամս [8]յաւիտենից յիշե-
7 ցի։ Խօսեցայ ի գիշերի ընդ սրտի ի-
մում, հոգայի եւ տառապէր յիս՚՚ հոգի
8 իմ։ Միթէ յաւիտենից մերժեսցէ՞ զիս
Տէր, եւ ո՞չ եւս յաւելուցու ի հաճել եւ
9 եւս։ Կամ ի սպա՞ռ արգելցէ զողորմու-
թիւն իւր յինէն, կամ կատարեսցի՞ զբան
10 իւր ազգէ մինչեւ յազգ։ Կամ մոռասցի՞
գթալ Աստուած իմ եւ եւս, կամ ար-
գելցէ՞ զգթութիւն իւր բարկութեամբ
իւրով։ Հանգիստ։

[1] Եբր. Թմրեցան եւ կառք եւ ձի [2] Եբր. քո, ի ժամէ բարկութեան քո։ (9) Յերկնից լսելի արարեր զդատաստան [3] Եբր. երկրի։ Հանգիստ։ (11) Ապաքէն ցասումն մարդկան խոստովան առնի առ քեզ. զմնացորդ ցասմանն դու նուաճես։ [4] Եբր. ձերում [5] Եբր. Առ գլխաւոր երաժշտացն, ի վերայ Իդիթունայ. երգ Ասափայ։ [6] Եբր. ձեռն իմ գիշերի տարածեցաւ եւ ոչ թուլացաւ [7] Եբր. խռովեցայ [8] Եբր. յաւիտենից։ (7) Յիշեցի զմրմունջ իմ ի գիշերի. ընդ սրտի իմում խորհէի, եւ հետազօտէր

11 Ասացի թէ [9]Այժմ սկսայ՚՚. այս է նո-
12 րոգումն աջոյ Բարձրելոյն։ Յիշեցի
զգործս Տեառն. ի սկզբանէ յիշեցի
13 զսքանչելիս նորա։ Խորհեցայ յամենայն
գործս քո, եւ ի ձեռագործս քո խորհե-
ցայ։
14 Աստուած, ի սրբութեան են ճանա-
պարհք քո. ո՞վ է Աստուած մեծ որպէս
15 զԱստուած մեր։ Դու ես Աստուած՝ որ
առնես սքանչելիս. ցուցեր ժողովրդեան
16 քում զզօրութիւն քո։ Փրկեցեր բազ-
կաւ քով զժողովուրդս քո զորդիսն Յա-
17 կոբայ եւ Յովսեփու։ Հանգիստ։ Տեսին
զքեզ ջուրք, Աստուած, տեսին զքեզ ջուրք
եւ երկեան, եւ խորք [10]խռովեցան ի ձայնէ
18 ջուրց բազմաց։ Ձայն ետուն ամպք,
19 քանզի՚՚ եւ նետք քո գնան՝ [11]Ի ձայնէ որո-
տալոյ քո անուի՚՚. երեւեցան փայլա-
տակունք քո տիեզերաց, խռովեցաւ եւ
20 դողաց երկիր։ Ի ծովու են ճանապարհք քո,
եւ շաւիղք քո ի ջուրս բազումս, եւ հետք
21 քո ոչ եւս երեւին։ Առաջնորդեցեր որպէս
խաշին ժողովրդեան քո, ի ձեռն Մով-
սէսի եւ Ահարոնի։

## ՍԱՂՄՈՍ ՀԷ (ՀԸ)

Իմաստութիւն Ասափայ։

1 [12]Նայեցարուք, ժողովուրդք,՚՚ յօրէնս իմ,
խոնարհեցուցէք զունկն ձեր ի բանս բե-
2 րանոյ իմոյ։ Բացից առակաւ զբերան իմ,
3 եւ խօսեցայց զառակս ի սկզբանէ։ Որպէս
լուաք եւ ծանեաք զայս, եւ հարքն մեր
4 պատմեցին մեզ։ Ոչինչ ծածկեցաք յորդ-
ւոց նոցա. յազգ յայլ պատմել զօրհնու-
թիւնս Տեառն՝ զզօրութիւն եւ զսքան-
չելիս իւր զոր արար։
5 Հաստատեաց զվկայութիւն իւր առ
Յակոբ, եւ օրէնս եդ ի վերայ Իսրա-
յելի. որ ինչ միանգամ պատուիրեաց
հարցն մերոց՝ ցուցանել զայս որդւոց
6 իւրեանց. Զի ծանիցեն յազգ յայլ, որ-
դիք որ ծնանիցին, յարիցեն եւ պատմեսցեն
7 զայս որդւոց իւրեանց. Զի դիցեն առ
Աստուած զյոյս իւրեանց, եւ մի՛ մո-
ռասցին զգործս Աստուծոյ, զպատուի-
8 րանս նորա խնդրելով խնդրեսցեն, Եւ
մի՛ եղիցին որպէս եւ հարքն իւրեանց,
ազգ չար եւ դառնացօղ, ազգ որ ոչ ուղ-

[9] Եբր. Այս է տկարութիւն իմ. [10] Եբր. խռովեցան։ (18) Տեղացին ջուրս ամպք. ձայն ետուն երկինք [11] Եբր. Ձայն որոտալոյ քո ի մրրկի [12] Եբր. Ունկն դիր, ժողովուրդ իմ

ղեաց զսիրտ իւր եւ ոչ հաստատեաց առ
Աստուած զհոգի իւր ։
9 Որդիք Եփրեմի լեաձիգք եւ աղեղա-
ձիգք, յաւուր պատերազմի կապարճս
10 դարձուցին ։ Ոչ պահեցին նոքա զուխտ
[1]Տեառն, եւ ըստ օրինացն նորա ոչ կա-
11 մեցան գնալ։ Մոռացան զերախտիս նո-
րա, եւ զսքանչելիսն զոր եցոյց նոցա ։
12 Առաջի հարցն նոցա զոր արար զսքան-
չելիս իւր, յերկրին Եգիպտացւոց եւ ի
դաշտին Տայանու ։
13 Հերձ զծովն եւ անցոյց զնոսա, եւ կա-
14 ցոյց զջուրսն որպէս [2]ի տիկս ։ Առաջ-
նորդեաց նոցա ամպով ի տուէ, եւ զա-
15 մենայն գիշեր ի լոյս հրոյ ։ Հերձ զվէմն
յանապատին, եւ ետ ըմպել նոցա որպէս
16 ի խորոց մեծէ ։ Հան զջուրսն ի վիմէ, եւ
հոսեաց որպէս զգետս զջուրսն,
17 Սակայն յաւելին ի մեղանչել, եւ եւս
բարկացուցին զԲարձրեալն յանջրդի ։
18 Փորձեցին զԱստուած ի սիրտս իւրեանց,
ի խնդրել զկերակուր անձանց իւրեանց ։
19 Տրանջեցին զԱստուծոյ եւ ասացին,
Միթէ կարօ՞ղ իցէ Աստուած պատրաս-
20 տել սեղան յանապատի ։ [3]Քանզի հար-
կանէր զվէմն եւ հոսէին ջուրք, եւ վտակք
խաղային ի նմանէ. Այլ՝ հա՞ց եւս կա-
րասցէ տալ նա մեզ, կամ պատրաս-
տեսցէ՞ [4]սեղան ժողովրդեան իւրոյ ։
21 Վասն այսորիկ լուաւ զայս Տէր եւ
[5]յապաղեաց. հուր բորբոքեցաւ ի Յա-
կոբ, եւ բարկութիւն ել ի վերայ Իս-
22 րայէլի ։ Զի ոչ հաւատացին յԱստուած,
եւ ոչ յուսացան ի փրկութիւն նորա ։
23 Հրաման ետ ամպոց ի վերուստ եւ
24 զդրունս երկնից եբաց, Եւ տեղեաց ի
նոսա մանանայ ի կերակուր. զհաց երկ-
25 նից ետ նոցա. Զհաց [6]հրեշտակաց կե-
րան մարդիկ. եւ իջոյց ի նոսա կերա-
կուր ի լիութիւն ։
26 Հան զհողմ [7]հարաւոյ, եւ ած զօրու-
27 թեամբ իւրով [8]զհիւսիսի ։ Տեղեաց ի նո-
սա միս որպէս զհող, որպէս զաւազ ծո-
28 վու զթռչունս թեւաւորս. Անկ ի մէջ
բանակի նոցա, եւ շուրջ զվրանօք նո-
29 ցա ։ Կերան եւ յագեցան յոյժ, եւ զցան-
30 կութիւն նոցա ետ նոցա, Եւ ոչինչ կա-
րօտ եղեն ի ցանկութենէ իւրեանց, մինչ-
դեռ կերակուրք ի բերանս իւրեանց էին,

[1]Եբր. Աստուծոյ [2]Եբր. դեզս [3]Եբր. Մինչ
[4]Եբր. միս [5]Եբր. բարկացաւ [6]Եբր. հզօրաց
[7]Եբր. արեւելից [8]Եբր. զհարաւ

31 Բարկութիւն յԱստուծոյ ել ի վերայ նո-
ցա, սպան [9]զբազումս ի նոցանէ, եւ
զընտիրս ընտրոց յԻսրայելէ սատա-
կեաց ։
32 Յայսմ ամենայնի մեղան եւ եւս, եւ
33 ոչ հաւատացին սքանչելեաց նորա ։ Պա-
կասեցան յունայնութեան աւուրք նո-
ցա, եւ ամք նոցա [10]փութապէս անցին ։
34 Յորժամ սպանանէր զնոսա՝ խնդրէին
զնա, դառնային եւ առաւօտ գային
35 առ Աստուած ։ Յիշեցին զի Աստուած
օգնական էր նոցա, Աստուած բարձ-
36 րեալ փրկիչ էր նոցա ։ [11]Սիրեցին զնա՝
բերանօք իւրեանց, եւ լեզուօք իւրեանց
37 ստեցին նմա. Եւ սիրտք նոցա ոչ էին ու-
ղիղ ընդ նմա, եւ ոչ հաւատացին ուխ-
տի նորա ։
38 Այլ նա ինքն գթած էր, քաւէր զմեղս
նոցա եւ ոչ ապականէր. յաճախէր դար-
ձուցանել զբարկութիւն, եւ ոչ բորբո-
39 քէր զամենայն սրտմտութիւն իւր ։ Յի-
շեաց թէ մարմին են նոքա. հոգի որ
ելանէ՝ եւ ոչ եւս դառնայ ։
40 Քանի՛ցս անգամ դառնացուցին զնա
յանապատի, բարկացուցին զԲարձրեալն
41 յանջրդի ։ Դարձան եւ փորձեցին զԱս-
տուած, եւ զՍուրբն Իսրայելի զայրա-
42 ցուցին ։ Ոչ յիշեցին զձեռն նորա յաւուր
յորում փրկեաց զնոսա ի ձեռաց նեղչաց
43 նոցա ։ Որպէս արար զնշանս եւ զա-
րուեստս իւր յերկրին Եգիպտացւոց եւ
44 ի դաշտին Տայանու ։ Դարձոյց յարիւն
զգետս նոցա, եւ զանձրեւս նոցա զի մի
45 արբցեն ։ Առաքեաց ի նոսա շանաճանճ
եւ եկեր զնոսա, եւ գորտս ապականեաց
46 զնոսա ։ Ետ ժանգոյ զպտուղ նոցա, եւ
47 զվաստակս նոցա մարախոյ ։ Եհար կար-
կտիւ զայգիս նոցա, եւ զթզենիս նոցա
48 [12]եղեմամբ ։ Մատնեաց ի կարկուտ զա-
նասունս նոցա, եւ զստացուածս նո-
49 ցա հրոյ պատեցաւ ։ Առաքեաց ի նոսա
զսրտմտութիւն բարկութեան իւրոյ,
զսրտմտութիւն, զբարկութիւն եւ զնե-
ղութիւն. առաքեաց ի նոսա տանջանս ի
50 ձեռն հրեշտակի չարի ։ Դիմեցոյց ի նո-
սա զսրտմտութիւն բարկութեան իւրոյ.
ոչ խնայեաց ի մահուանէ զանձինս նո-
ցա, եւ զանասունս նոցա ի մահ մատ-
51 նեաց ։ Եհար զամենայն անդրանիկս Ե-
գիպտացւոց, զսկիզբն ամենայն վաս-

[9]Եբր. զպարարտս [10]Եբր. յերկիւղի [11]Եբր.
Նենգեցին նմա [12]Եբր. սառնամանեօք

տակաց նոցա ի յարկս Քամայ։ [1]Հան-
52 գիստ։ Հորդան եա որպէս խաշինս՝ ժո-
ղովրդեան իւրոյ, եւ եհան զնոսա որ-
53 պէս հօտ յանապատ։ Առաջնորդեաց նո-
ցա յուսով եւ ոչ երկեան, եւ զթշնա-
54 միս նոցա ծով ծածկեաց։ Եհան զնոսա
[2]ի լեառն սրբութեան իւրոյ, ի լեառն՝ այն
55 զոր ստացեալ էր աջոյ նորա։ Մեր-
ժեաց յերեսաց նոցա զհեթանոսս, եւ վի-
ճակեցոյց ի նոսա զվիճակ ժառանգու-
թեան իւրոյ, եւ բնակեցոյց ի յարկս
նոցա զազգն Իսրայելի։
56 Փորձեցին դառնացուցին զԱստուած
Բարձրեալն, եւ զվկայութիւն նորա
57 ոչ պահեցին։ Դարձան խոտորեցան որ-
պէս եւ հարքն իւրեանց, դարձան եւ ե-
58 ղեն որպէս զաղեղն թեւր։ Դարձեալ
բարկացուցին զնա ի բագինս իւրեանց,
եւ գրօշելովք իւրեանց նախանձ ար-
կին նմա։
59 Լուաւ Աստուած եւ արհամարհեաց
զնոսա, եւ անարգեաց յոյժ զԻսրայէլ։
60 Մերժեաց յւրմէ զխորանն ի Սելով,
զխորանն՝ զոր բնակեցոյց ի մէջ մարդկան։
61 Մատնեաց ի գերութիւն զզօրութիւնս
[3]նոցա, եւ զգեղ նոցա՞ ի ձեռս թշնա-
62 մեաց նոցա։ Արգել ի սուր զժողովուրդ
իւր, եւ զժառանգութիւն իւր անտես
63 արար։ Զերիտասարդս նոցա եկեր հուր,
եւ [4]վասն կուսանաց նոցա ոչ ոք սգա-
64 ցաւ՞։ Քահանայք նոցա անկան ի սուր,
եւ [5]զայրիս նոցա ոչ ոք էր որ լայր՞։
65 Զարթեաւ որպէս ի քնոյ Տէր, որպէս
66 հզօր զի թափէ զգինի։ Եհար յետս
զթշնամիս իւր, նախատինս յաւիտենից
արար զնոսա։
67 Մերժեաց նա զխորանն Յովսեփու,
68 եւ զազգն Եփրեմի նա ոչ ընտրեաց։ Այլ
ընտրեաց նա զազգն Յուդայ, զլեառն
69 Սիոն զոր եւ սիրեաց։ Շինեաց որպէս
[6]միեղջերոյ զսրբութիւն նորա, յերկրի՞
70 հաստատեաց զնա յաւիտեան։ Ընտրեաց
զԴաւիթ ծառայ իւր եւ ընկալաւ զնա
71 ի հօտէ խաշանց. Ի վերջին ծնելոցն ըն-
կալաւ զնա, հովուել զՅակոբ ծառայ
իւր, եւ զԻսրայէլ ժառանգութիւն իւր։
72 Արածէր զնոսա խմաստութեամբ սրտի
իւրոյ, [7]յանմեղութիւն ձեռաց իւրոց ա-
ռաջնորդէր նոցա։

## ՍԱՂՄՈՍ ՀԸ (ՀԹ)

*Սաղմոս Ասափայ։*

1 Աստուած, մտին հեթանոսք ի ժառան-
գութիւն քո, պղծեցին զտաճար սուրբ
քո, արարին զԵրուսաղէմ [8]որպէս զհուզս
2 մրգապահաց՞։ Արկին զդիակունս ծառա-
յից քոց կէչ թռչնոց երկնից, եւ զմար-
3 մինս սրբոց քոց գազանաց երկրի։ Հե-
ղին զարիւնս նոցա որպէս ջուր շուրջ
զԵրուսաղեմաւ, եւ ոչ ոք էր որ թաղէր
4 զնոսա։ Եղաք մեք նախատինք դրացեաց
մերոց, ծաղր եւ այպն կատականաց
այնոցիկ որ շուրջ էին զմեւք։
5 Մինչեւ յե՞րբ, Տէր. բարկանայ՞ս դու
ի սպառ. բորբոքեսցի՞ որպէս հուր նա-
6 խանձ քո։ Հեղ զբարկութիւն քո ի վե-
րայ ազգաց որ զքեզ ոչ ճանաչիցեն, ի
վերայ [9]թագաւորաց որ զանուն քո ոչ
7 կարդացին։ Զի կերան զՅակոբ եւ
զտեղի նորա աւերեցին։
8 Մի՛ յիշեր զմեղս մեր զառաջինս,
վաղվաղ եկեսցէ առ մեզ ողորմութիւն
9 քո, Տէր, զի աղքատացաք յոյժ։ Օգ-
նեա մեզ, Աստուած փրկիչ մեր, վասն
փառաց անուան քո. Տէր, փրկեա զմեզ
եւ քաւեա զմեղս մեր վասն անուան
10 քո։ Մի՛ երբեք ասասցեն ի հեթանոսս,
թէ Ո՞ւր է Աստուած նոցա. այլ յայտ-
նի լինիցի ի վերայ հեթանոսաց առաջի
աչաց մերոց, առ ի խնդրել զվրէժ ա-
րեան ծառայից քոց որ հեղաւ։
11 Մտցէ առաջի քո հեծութիւն կապե-
լոց. ըստ մեծութեան բազկի քո [10]չա-
12 հեա զու զորդիս սպանելոց։ Հատո դրա-
ցեաց մերոց եւթնպատիկ ի ծոց նոցա,
նախատինս զոր նախատեցին զքեզ, Տէր։
13 Մեք ժողովուրդ եւ խաշն արօտի քո
խոստովան եղիցուք առ քեզ յաւիտեան,
ազգէ յազգ պատմեսցուք զօրհնու-
թիւնս քո։

---

[1] Եբր. դադար [2] Եբր. ի սահման [3] Կամ, իւր, եւ զփառս իւր [4] Կամ, կուսանք նոցա ոչ առին սուգ, կամ, ոչ մտին ի սրսկապան [5] Կամ, այրիք նոցա ոչ լացին [6] Եբր. բարձունս զսրբութիւն իւր, որպէս զերկիր

[7] Եբր. ճարտարութեամբ [8] Եբր. յաւերակս [9] Եբր. թագաւորութեանց [10] Եբր. ապրեցո

## ՍԱՂՄՈՍ ՁԹ (Ղ)

1 [1]Ի կատարած. ի վերայ զատանցելոցն
վկայութիւն. Ասափայ Սաղմոս, ի վերայ
Եթւովպացւոյն։

2 Որ հովուես Իսրայէլի՝ նայեաց, որ ա-
ռաջնորդես որպէս խաշին Յովսեփու.
3 որ նստիս ի քերովբէս՝ յայտնեաց։ Ա-
ռաջի Եփրեմի, Բենիամինի եւ Մանա-
սէի, զարթո զզօրութիւն քո, եւ եկ
4 ի կեցուցանել զմեզ։ Աստուած [2]զօրու-
թեանց, դարձո զմեզ, երեւեցո զերեսս
քո ի մեզ եւ կեցցուք։
5 Տէր Աստուած զօրութեանց, մինչեւ
յե՞րբ բարկանաս յաղօթս ծառայից քոց։
6 Ջամբեցեր [3]մեզ հաց արտասուաց, եւ
արբուցեր [3]մեզ արտասուս [4]չափով։
7 Արարեր զմեզ նախատինս դրացեաց մե-
րոց, այպն կատականաց թշնամեաց մե-
8 րոց։ Աստուած զօրութեանց, դարձո
զմեզ, երեւեցո զերեսս քո ի մեզ եւ
կեցցուք։
9 Այգի յԵգիպտոսէ փոխեցեր, հաներ
10 զհեթանոսս եւ զնոսա տնկեցեր. Եւ ա-
ռաջնորդեցեր նմա, հաստատեցեր զար-
11 մատս նորա եւ ելից զերկիր։ Ծածկեաց
զլերինս հովանի նորա, եւ բարունակ
12 նորա զմայրս Աստուծոյ։ Ձգեաց զորթ
իւր մինչեւ ի ծով, մինչեւ ի Գետ են
13 շառաւեղք նորա։ Ընդէ՞ր քակեցեր զցանկ
նորա, կթեն զնա անցաւորք ճանապար-
14 հի։ Ապականեաց զնա խոզ անտառի,
եւ երէ վայրի արածեցաւ ի նմա։
15 Աստուած զօրութեանց, դարձ հայեաց
յերկնից եւ տես, այց արա այգւոյս այս-
16 միկ. Եւ զարմանն տար սմա զոր տնկեաց
աջ քո, ի վերայ որդւոյ մարդոյ՝ զոր զօ-
17 րացուցեր զնա ի քեզ։ Այրեցեալ ի հուր
եւ աւերեալ, ի սաստէ քումմէ կորի-
18 ցեն։ Եղիցի ձեռն քո ի վերայ առն, աջ
քո ի վերայ որդւոյ մարդոյ՝ զոր զօրա-
19 ցուցեր զնա ի քեզ։ Ոչ եւս ի բացեայ
եղիցուք մեք ի քէն. կեցուսցես զու-
զմեզ, եւ զանուն քո կարդասցուք։
20 Տէր Աստուած զօրութեանց, դարձո
զմեզ, երեւեցո զերեսս քո ի մեզ եւ
կեցցուք։

[1]Եբր. Առ գլուխ երաժշտացն. ի վերայ Շօշաննիմ-էտուդայ. Սաղմոս Ասափայ։ [2]Եբր. զօրաց
[3]Եբր. նոցա [4]Եբր. չափով մեծաւ

## ՍԱՂՄՈՍ Ղ (ՂԱ)

1 [5]Ի կատարած. վասն հնձանացն. Սաղմոս
Ասափայ, հինգերորդ շաբաթուն։

2 Ցնծացէք առ Աստուած, օգնական է
մեր, աղաղակեցէք առ Աստուած Յա-
3 կոբայ։ Առէք սաղմոս եւ տուք օրհնու-
թիւն, սաղմոսասացէք նմա ի ձայն քաղց-
4 րութեան։ Փող հարէք ի գլուխ ամսոց,
յաւուր նշանաւորի տարեկանաց մերոց։
5 Հրաման է այս Իսրայէլի, եւ իրաւունք
6 են Աստուծոյ Յակոբայ։ Վկայութիւն
Յովսեփու զոր եդ ընդ նմա. որպէս ե-
լանէր նա յերկրէն Եգիպտացւոց. լեզու
զոր ոչ գիտէր լուաւ։
7 Ի բաց արար ի բեռանց զթիկունս նո-
րա, եւ ձեռս նորա յորթ եւ ի թի ծա-
8 ռայեցան։ Ի նեղութեան կարդացեր առ
իս եւ փրկեցի զքեզ, լուայ քեզ ի գաղտ-
նութեան մրրկին, եւ փորձեցի զքեզ ի
9 վերայ ջուրցն Հակառակութեան[6] Լուր,
ժողովուրդ իմ, եւ վկայեմ քեզ, եւ Իս-
10 րայէլ՝ թէ լուիցես ինձ։ Մի եւս եղի-
ցին քեզ աստուածք առժամայինք եւ
մի երկիր պագանիցես դու աստուծոյ օ-
11 տարի։ Ես եմ Տէր Աստուած քո՝ որ
հանի զքեզ յերկրէն Եգիպտացւոց, բաց
12 զբերան քո եւ լցից զդա։ Ժողովուրդ
իմ ոչ լուաւ ձայնի իմում, եւ Իսրայէլ
13 յիս ինչ ոչ նայեցաւ։ Բարձի թողի զնո-
սա երթալ զհետ կամաց սրտից իւրեանց,
զի գնասցեն նոքա ըստ կամս անձանց
14 իւրեանց. Զի թէ ժողովրդեան իմոյ
լուեալ էր ինձ, կամ Իսրայէլի զճանա-
15 պարհս իմ գնացեալ էր, Որպէս զոչինչ
խոնարհ արարեալ էր իմ զթշնամիս նո-
րա, ի վերայ նեղչաց նորա արկեալ էր
16 զձեռն իմ։ Թշնամիք Տեառն ստեցին
նմա, եւ եղիցին ժամանակք նոցա [7]յաւ-
17 իտեան։ Կերակրեաց զնոսա ի պարար-
տութենէ ցորենոյ, ի վիմէ մեղր յագե-
ցոյց նոցա։

## ՍԱՂՄՈՍ ՂԱ (ՂԲ)

Սաղմոս Ասափայ։

1 Աստուած եկաց ի ժողովս [8]աստուա-
ծոց, եւ ի մէջ նոցա" դատէր զնոսա։

[5]Եբր. Առ գլուխ երաժշտացն. ի վերայ Գիթթիթայ. Սաղմոս Ասափայ։ [6]Եբր. [illegible] սէլա, Հանգիստ։ [7]Եբր. յաւիտեան [8]Եբր. Աստուծոյ, կամ, Հզօրի. եւ ի մէջ աստուածոց, կամ, դատաւորաց

2 Մինչեւ յե՞րբ դատիք անիրաւութեամբ,
3 եւ ակն առնուք մեղաւորաց։[1] Դատ ա-
րարէք որբոյն եւ այրւոյ, խոնարհին ա-
4 րարէք անանկին եւ խոնարհի։ Ապրեցու-
ցէք զաղքատն եւ զտնանկն, ի ձեռաց
մեղաւորի փրկեցէք զնոսա։
5 Ոչ իմացան եւ ոչ ի միտ առին, ի
խաւարի գնացին, եւ շարժեցան ամե-
6 նայն հիմունք երկրի։ Ես ասացի թէ
աստուածք իցէք, կամ որդիք Բարձրե-
7 լոյ ամենեքեան։ Դուք աւադիկ որպէս
մարդիկ մեռանիք, եւ որպէս զմի յիշ-
խանաց անկանիք։
8 Արի, Աստուած, եւ դատեա զերկիր,
զի դու ժառանգեսցես զամենայն հե-
թանոսս։

## ՍԱՂՄՈՍ ՁԲ (ՁԳ)

1 Սաղմոս օրհնութեան Ասափայ։

2 Աստուած, [2]ո՞ քեզ նմանիցէ". մի՛ լռեր
3 եւ մի՛ դադարեր, Աստուած։ Զի ահա
թշնամիք քո գոչեցին, եւ ատելիք քո
4 համբարձին զգլուխս իւրեանց։ Ի վերայ
ժողովրդեան քո [3]խորամանկեցին զգի-
տութիւն, խորհեցան ի վերայ սրբոց"
5 քոց, Եւ ասացին, Եկա՛յք սատակեսցուք
զնոսա յազգաց, եւ մի՛ յիշեսցի անուն
6 Իսրայէլի եւ եւս։ Խորհեցան միաբա-
նութեամբ ի միասին, եւ վասն քո ուխտ
7 արարին։ Բանակք Եդովմայեցւոց եւ
Իսմայէլացիք, Մովաբ եւ Հագարացիք,
8 Գեբաղ, Ամոն, Ամաղէկ, եւ այլա-
զգիքն ամենայն բնակչօքն հանդերձ Տիւ-
9 րայ։ Նա եւ Ասուր եկեալ էր ընդ նո-
սա. ամենեքեան նոքա զօրավիգն էին
որդւոցն Ղովտայ։[1]
10 Արա զնոսա որպէս զՄադիամ, որպէս
զՍիսարա, որպէս զՅաբին ի ծործորն
11 Կիսոնի։ Սատակեցան նոքա յականն
Դովրայ, եւ եղեն որպէս զաղբ երկրի։
12 Արա զիշխանս նոցա որպէս զՈրէբն,
զԶէբն, զԶէբէէ եւ զՍաղմանա եւ զա-
13 մենայն իշխանս նոցա. Որք ասացին՝
Ժառանգեսցուք ի մեզ զսրբութիւն Աս-
14 տուծոյ։ Աստուած իմ, արա զնոսա որ-
պէս [4]զանիւ, որպէս զեղէգն առաջի
15 հողմոյ։ Որպէս հուր զի այրէ զմայրս,
16 որպէս բոց զի կիզու զլերինս։ Այնպէս
հալածեսցես զնոսա մրրկաւ քով, եւ
բարկութեամբ քով խռովեցուսցես զնո-
17 սա։ Լից զերեսս նոցա անարգանօք, եւ
18 խնդրեսցեն զանուն քո, Տէր։ Ամաչես-
ցեն եւ խռովեսցին յաւիտեանս յաւի-
19 տենից, եւ ամօթալից կորիցեն։ Ծանի-
ցեն զի անուն քո Տէր է, եւ դու միայն
բարձրեալ ես ի վերայ ամենայն երկրի։

## ՍԱՂՄՈՍ ՁԳ (ՁԴ)

1 [5]Ի կատարած. վասն հնձանացն". որդ-
ւոցն Կորխայ Սաղմոս։

2 Որպէս սիրելի են յարկք քո, Տէր զօ-
3 րութեանց։ Ցանկայ եւ փափաքէ անձն
իմ ի գաւիթս քո. սիրտ իմ եւ մարմին
իմ ցնծացին առ Աստուած կենդանի։
4 Քանզի ճնճղուկ եգիտ իւր տուն, եւ [6]տատ-
րակ զբոյն ուր դիցէ զձագս իւր, [7]սե-
ղան քո, Տէր զօրութեանց, Թագաւոր
5 իմ եւ Աստուած իմ։ Երանի ամենեցուն
որ բնակեալ են ի տան Տեառն, յաւի-
տեանս յաւիտենից օրհնեսցեն զքեզ։[1]
6 Երանեալ է այր որոյ օգնութիւն իւր ի
7 քէն է, ելս եդ ի մտի իւրում. [8]Ի հովտէս
արտասուաց ի տեղւոջ յորում ուխ-
տեաց. զօրհնութիւնս տացէ՛ որ զօրէնս
8 գնէ։" Գնասցէ նա ի զօրութենէ ի զօրու-
թիւն, եւ երեւեսցի [9]Աստուած ի Սիոն։
9 Տէր Աստուած զօրութեանց, լուր աղօ-
թից իմոց, ունկն դիր, Աստուած [10]Յա-
10 կոբայ։ Ընդունելի" ես դու մեր, տես,
Աստուած, եւ նայեաց յերեսս օծելոյ քո։
11 Վասն զի լաւ է ինձ մի օր ի գաւիթս քո,
քան զհազարս. ընտրեցի [11]ընդ աղբ գալ
ի տան" Աստուծոյ, առաւել քան բնա-
12 կանալ ի յարկս մեղաւորաց։ [12]Զողոր-
մութիւն եւ զճշմարտութիւն սիրէ Տէր
Աստուած մեր", զշնորհս եւ զփառս տացէ
Տէր, ոչ պակաս առնէ զողորմութիւն
իւր յայնցանէ որ գնան յամբծութեան։
13 Տէր Աստուած զօրութեանց, երանեալ
է այր որ յուսայ ի քեզ։

---

[1] Եբրայեցին յաւելու, Հանգիստ։ [2] Եբր. մի՛ կացցես անբարբառ. [3] Եբր. Նենգութեամբ կալան խորհուրդ. խորհեցան ի վերայ թաքուցելոց [4] Կամ, մրրիկ

[5] Եբր. Առ գլուխ երաժշտացն, ի վերայ Գիթթիթայ [6] Եբր. ծիծառն [7] Եբր. առ սեղանոյ [8] Եբր. Անցեալ ի հովիտ տրտմութեան աղբեր զնա դնեն՝ աղբեւր. այլ եւ անձրեւ կանուխ ծածկեսցէ զնա օրհնութեամբ։ [9] Կամ, առաջի Աստուծոյ [10] Եբր. Յակոբայ։ Հանգիստ։ (10) Վահան [11] Եբր. եւ կալ ի սեամս տանն [12] Եբր. Քանզի արեգակն եւ վահան է Տէր Աստուած

## ՍԱՂՄՈՍ ՁԴ (ՁԵ)

1 [1]Ի կատարած. որդւոցն Կորխայ Սաղմոս։
2 Հաճեցար, Տէր, ընդ երկիր քո, եւ
3 դարձուցեր զգերութիւն Յակոբայ։ Թո-
ղեր զանօրէնութիւն ժողովրդեան քո,
4 ծածկեցեր զամենայն մեղս նոցա[2] Լռե-
ցուցեր զամենայն սրտմտութիւնս քո,
դարձար ի բարկութենէ սրտմտութեան
5 քո։ Դարձ առ մեզ, Աստուած փրկիչ
մեր, եւ դարձո զսրտմտութիւն քո ի
6 մէնջ։ Մի՛ յաւիտեան բարկանար մեզ,
Տէր, եւ մի՛ ձգեր զբարկութիւն քո ազգէ
7 մինչեւ յազգ։ Աստուած, դու դարձեալ
կեցուսցես զմեզ, ժողովուրդ քո ուրախ
8 եղիցի ի քեզ։ Ցոյց մեզ, Տէր, զողոր-
մութիւնս քո, եւ զփրկութիւնս քո
տուր մեզ։
9 Լուայց զինչ խօսի Տէր Աստուած մեր.
խօսեսցի զխաղաղութիւն ժողովրդեան
[3]իւրոյ առ սուրբս իւր՝ եւ առ այնոսիկ
10 որ դարձեալ են առ նա սրտիւք"։ Սակայն
մերձ է առ երկիւղածս իւր փրկութիւն
նորա, բնակել փառաց նորա յերկրի մե-
11 րում։ Ողորմութիւն եւ ճշմարտութիւն
[4]պատահեսցին, արդարութիւն եւ խա-
12 ղաղութիւն [5]համբուրեսցին։ Ճշմարտու-
թիւն յերկրէ բուսաւ, արդարութիւն
13 յերկնից երեւեցաւ։ Տէր տացէ զքաղց-
րութիւն եւ երկիր մեր տացէ զպտուղ
14 իւր։ Արդարութիւն առաջի նորա գնաս-
ցէ, զիցէ ի ճանապարհի զգնացս իւր։

## ՍԱՂՄՈՍ ՁԵ (ՁԶ)

Աղօթք Դաւթի։

1 Խոնարհեցո, Տէր, զունկն քո եւ լուր
2 ինձ, զի աղքատ եւ տնանկ եմ ես։ Պա-
հեա զանձն իմ զի սուրբ եմ ես.
փրկեա զծառայս քո, Աստուած իմ, որ
3 ի քեզ յուսացայ։ Ողորմեա ինձ, Տէր,
զի առ քեզ աղաղակեցի զօրհանապազ։
4 Ուրախ արա զանձն ծառայի քո,
զի առ քեզ, Տէր, համբարձի զանձն իմ։
5 Զի դու, Տէր, քաղցր եւ [6]ուղիղ ես,
բազումողորմ առ ամենեսեան որ կար-
6 դան առ քեզ։ Ունկն դիր, Տէր, աղօ-
թից իմոց, եւ նայեաց ի ձայն խնդրուա-
7 ծաց իմոց։ Յաւուր նեղութեան իմոյ
կարդացի առ քեզ, եւ լուար ինձ։
8 Ոչ ոք է նման քեզ յաստուածս, Տէր,
9 եւ ոչ ոք է որպէս զգործս քո։ Զամե-
նայն ազգս զոր արարեր՝ եկեսցեն եւ
երկիր պագցեն առաջի քո, եւ փառս տա-
10 ցեն անուան քո [7]յաւիտեան։ Մեծ
ես դու, Տէր, եւ առնես սքանչելիս,
11 եւ դու միայն ես Աստուած։ Առաջնոր-
դեա ինձ ի ճանապարհի քում, եւ գնա-
ցից ի ճշմարտութեան քում, եւ ուրախ
եղիցի սիրտ իմ՝ երկնչել յանուանէ
12 քումմէ։ Խոստովան եղէց առ քեզ, Տէր
Աստուած իմ, բոլորով սրտիւ իմով,
փառաւոր արարից զանուն քո յաւի-
13 տեան։ Մեծ եղեւ ի վերայ իմ ողորմու-
թիւն քո, փրկեցեր զանձն իմ ի
դժոխոց ներքնոց։
14 Աստուած, անօրէնք յարեան ի վերայ
իմ, եւ ժողովք հզօրաց խնդրեցին զանձն
իմ, եւ ոչ համարեցան զքեզ Աստուած
15 առաջի իւրեանց։ Այլ դու, Տէր Աստուած
իմ, գթած ես եւ ողորմած, երկայնա-
16 միտ՝ բազումողորմ եւ ճշմարիտ։ Նայեաց
առ իս եւ ողորմեա ինձ. տուր զօրու-
թիւն ծառայի քո, կեցո զորդի աղախ-
17 նոյ քո. Եւ արա առ իս նշան բարու-
թեան. տեսցեն ատելիք իմ եւ ամաչես-
ցեն, զի դու, Տէր, օգնեցեր ինձ եւ
մխիթարեցեր զիս։

## ՍԱՂՄՈՍ ՁԶ (ՁԷ)

1 Որդւոցն Կորխայ Սաղմոս օրհնութեան։
2 Հիմունք նորա ի լերինս սուրբ նորա.
սիրէ Տէր զդրունս Սիոնի առաւել քան
3 զամենայն յարկս Յակոբայ։ Փառաւո-
րեալն խօսեցաւ վասն քո, ահաւադիկ
4 քաղաքդ Աստուծոյ։[2] Յիշեցից զՌահաբ
եւ զԲաբելոն [8]որք ճանաչեն զիս. ահա
Այլազգիք եւ Տիւր եւ ժողովուրդք
5 [9]Հնդկաց՝ սոքա եղեն անդ։ Սիոնի [10]ա-
սի մայր, եւ մարդ" ծնաւ ի նմա, եւ
ինքն հիմունս արկ ի նմա Բարձրեալն։
6 [11]Տէր պատմեսցէ գրովք ժողովրդեան,
7 իշխանացս այսոցիկ որ եղեն անդ։ Որ-
պէս զի ուրախ լիցին ի քեզ ամենեքեան,
որոց բնակութիւն իւրեանց ի քեզ է"։

---

[1]Եբր. Առ գլուխ երաժշտացն. [2]Եբրայեցին յաւելու, Հանգիստ։ [3]Եբր. իւրում, եւ առ սուրբս իւր, որ ոչ դառնան ի յիմարութիւն [4]Եբր. պատահեցան [5]Եբր. համբուրեցան [6]Եբր. ներող

[7]Յեբր. [illegible] [8]Եբր. որոց [9]Եբր. Քուշայ [10]Եբր. ասի, Այր եւ այր [11]Եբր. Ի գրել Տեառն զժողովուրդս ասասցէ, Սա ծնաւ անդ։ Հանգիստ։ (7) Եւ երգեցողք, որպէս եւ քնարահարք, ասասցեն՝ Ամենայն աղբեւրք իմ ի քեզ են։

## ՍԱՂՄՈՍ ՁԷ (ՁԸ)

1 ¹Ի կատարած. վասն Մաղաղեթայ իմաս-
տութիւն. զի եա պատասխանի Եման
Եզրայելացի ։"
2 Տէր Աստուած փրկութեան իմոյ, ի
տուէ կարդացի եւ ի գիշերի առաջի քո ։
3 Մտցեն աղօթք իմ առաջի քո, Տէր,
խոնարհեցո ունկն քո ի խնդրուածս իմ ։
4 Զի լցաւ չարչարանօք անձն իմ, եւ
5 կեանք իմ ի դժոխս մերձեցան. Եւ հա-
մարեցայ ես ընդ այնոսիկ որ իջանեն ի
գուբ. եղէ ես որպէս մարդ առանց օգ-
6 նականի. Ի մեռեալս ²ազատ, որպէս վի-
րաւորս, որ ննջեն ի գերեզմանի. զորս
դու ոչ յիշեցեր, եւ նոքա ի ձեռանէ
7 քումմէ մերժեցան ։ Եդիր զիս ի գբի
ներքնումն, ի խաւարի եւ ի ստուերս մա-
8 հու ։ Ցիս հաստատեցաւ սրտմտութիւն
քո, զամենայն զբօսանս քո ածեր ի վե-
9 րայ իմ ։³ Հեռի արարեր յինէն զծանօթս
իմ, եւ ⁴եդին զիս նշաւակ իւրեանց".
10 մաշեցայ եւ ոչ ելանէի ։ Աչք իմ տկա-
րացան յաղքատութենէ. աղաղակեցի
առ Տէր զօրհանապազ, եւ համբարձի
առ քեզ զձեռս իմ ։
11 Միթէ մեռելոցն առնիցե՞ս զսքանչելիս քո
կամ ⁵բժիշկք յարուցանիցե՞ն", խոստովան
12 առնիցե՞ն առ քեզ ։³ Միթէ պատմեսցէ՞
ոք երբեք ի գերեզմանի զողորմութիւնս
քո, կամ զճշմարտութիւնս քո ի կորս-
13 տեան ։ Միթէ ծանիցե՞ն ի խաւարի
սքանչելիք քո, կամ արդարութիւն քո
14 յերկրի մոռացելոյ ։ Ես առ քեզ, Տէր,
աղաղակեցի, առաւօտու աղօթք իմ
ժամանեսցեն առ քեզ ։
15 Ընդէ՞ր, Տէր, մերժես զանձն իմ, կամ
16 դարձուցանես զերեսս քո յինէն ։ Տնանկ
եւ ⁶վաստակաւոր եմ ես ի մանկութենէ
իմմէ, ⁷ի բարձրութենէ խոնարհեցայ եւ"
17 ապշեցայ ։ Ցիս հաստատեցաւ բարկու-
թիւն քո, արհաւիրք քո խռովեցուցին
18 զիս ։ Շրջեցան զինեւ որպէս ջուր զօր ա-
19 մենայն, պաշարեցին զիս ի միասին ։ Հեռի
արարեր յինէն զբարեկամս իմ ⁸եւ զծա-
նօթս իմ, վասն թշուառութեան իմոյ" ։

¹Եբր. Երգ, Սաղմոս որդւոցն Կորխայ առ գլուխ երաժշտացն ի վերայ Մահաղաթ-Լէաննոթայ. իմաստութիւն Եմանայ Եզրահացւոյ ։ ²Եբր. ընկեցեալ ³Եբրայեցին յաւէլ, Հանգիստ ։ ⁴Եբր. եդիր զիս նշաւակ նոցա ⁵Եբր. մեռեալք յարիցե՞ն ⁶Եբր. ի մեռանել ⁷Եբր. ի կրել զահ քո ⁸Եբր. ծանօթք իմ ի խաւարի են

## ՍԱՂՄՈՍ ՁԸ (ՁԹ)

1 Իմաստութիւն ⁹Եմանայ Եզրայելացւոյ" ։
2 Զողորմութիւնս քո, Տէր, յաւիտեան
օրհնեցից, ազգէ յազգ պատմեցից զճըշ-
3 մարտութիւնս քո բերանով իմով ։ ¹⁰Ա-
սացեր՝ թէ Աշխարհս ողորմութեամբ
շինեսցի, յերկինս պատրաստ եղիցի
4 ճշմարտութիւն քո ։ Եդի ուխտ ընտրե-
լոց իմոց", երդուայ Դաւթի ծառայի ի-
5 մոյ ։ Յաւիտեան հաստատեցից զզաւակ
քո, եւ շինեցից ազգէ յազգ զաթոռ քո ։³
6 Խոստովան եղիցին երկինք սքանչելեաց
քոց, Տէր, եւ ճշմարտութիւն քո յեկե-
7 ղեցիս սրբոց ։ Ո՞վ է յամպս որ հաւա-
սարէ քեզ, կամ ո՞վ նմանիցէ Տեառն
8 յորդիս ¹¹Աստուծոյ ։ Աստուած փառաւո-
րեալ է ի խորհուրդս սրբոց իւրոց, մեծ
եւ ահաւոր ի վերայ այնոցիկ որ շուրջ
9 են զնովաւ ։ Տէր Աստուած զօրութեանց,
ո՞ նման է քեզ. հզօր ես դու, Տէր, եւ
10 ճշմարտութիւն քո շուրջ է զքեւ ։ Դու
տիրես զօրութեանց ծովու, եւ զխռո-
վութիւն ալեաց նորա դու ցածուցա-
11 նես ։ Դու խոնարհեցուցանես որպէս
զվիրաւորս ¹²զամբարտաւանս, ի զօրու-
թիւն բազկի քո ցրուեցեր զթշնամիս
12 քո ։ Քո են երկինք եւ քո է երկիր,
զաշխարհս լրիւ իւրով դու հաստատե-
13 ցեր ։ Զհիւսիս եւ զհարաւ դու արարեր,
Թաբոր եւ Հերմոն յանուն քո ցնծաս-
14 ցեն ։ Քո է բազուկ եւ քո է զօրութիւն,
զօրասցի աջ քո եւ բարձր եղիցի ձեռն
15 քո ։ Յարդարութիւն եւ իրաւունս հաս-
տատեալ է աթոռ քո, ողորմութիւն եւ
ճշմարտութիւն գնասցեն առաջի երե-
սաց քոց ։
16 Երանի ժողովրդեան որ գիտեն զօրհ-
նութիւնս քո, Տէր, ի լոյս երեսաց քոց
17 գնասցեն. Եւ յանուն քո ցնծասցեն զօր-
հանապազ, եւ յարդարութեան քում
18 բարձր եղիցին ։ Պարծանք զօրութեանց
¹³մերոց դու ես, եւ ի կամս քո բարձր
19 եղիցի եղջեւր մեր ¹⁴ի Տեառնէ է օգ-
նութիւն սրբոյն Իսրայելի՝ թագաւորին
մերոյ։"

⁹Եբր. Եթանայ Եզրահացւոյ ¹⁰Եբր. Զի ասացի, Ողորմութիւն յաւիտեան շինեսցի, յերկինս հաստատեսցես զճշմարտութիւն քո ։ (4) Եդի ուխտ ընդ ընտրելոյ իմում ¹¹Եբր. աստուածոց, կամ, հզօրաց ¹²Կամ, զՌահաբ ¹³Եբր. նոցա ¹⁴Եբր. Տեառն է վահան մեր, եւ Սրբոյն Իսրայելի թագաւոր մեր ։

20 Յայնժամ խօսեցար տեսլեամբ ընդ
[1]որդիս քո եւ ասացեր, Եդի զօգնու-
թիւն ի վերայ հզօրին, եւ բարձր ա-
րարի զընտրեալն ի ժողովրդենէ [2]իմ-
21 մէ։ Գտի զԴաւիթ ծառայ իմ, իւղով
22 սրբով իմով օծի զնա։ Ձեռն իմ ընկալցի
զնա, եւ բազուկ իմ զօրացուսցէ զնա։
23 Մի՛ մեղիցէ նմա թշնամի, եւ որդի ա-
նօրէնութեան մի՛ չարչարեսցէ զնա։
24 Հարից առաջի նորա զթշնամիս նորա, եւ
զատեալս նորա ի պարտութիւն մատնեցից։
25 Ճշմարտութիւն իմ եւ ողորմութիւն իմ
ընդ նմա, եւ յանուն իմ բարձր եղիցի
26 եղջեւր նորա։ Եդից ի ծով զձեռն նորա,
27 եւ ի վերայ գետոց զաջ նորա։ Նա կար-
դասցէ առ իս, Հայր իմ ես դու, Աստուած
28 [3]ընդունելի փրկութեան իմոյ։ Ես անդ-
րանիկ արարից զնա, եւ բարձր քան
29 զամենայն թագաւորս երկրի։ Յաւի-
տեան պահեցից նմա զողորմութիւն իմ,
30 եւ ուխտ իմ հաւատարիմ ընդ նմա։ Հաս-
տատեցից յաւիտեանս յաւիտենից զզա-
ւակ նորա, եւ զաթոռ նորա որպէս զա-
31 ւուրս երկնից։ Թէ թողցեն որդիք նորա
զօրէնս իմ, եւ յիրաւունս իմ ոչ կամես-
32 ցին գնալ, Թէ զարդարութիւնս իմ ա-
նարգեսցեն, եւ զպատուիրանս իմ ոչ
33 պահեսցեն, Հարից գաւազանաւ զանօ-
րէնութիւնս նոցա, եւ տանջանօք՝ զանի-
34 րաւութիւնս նոցա։ Բայց զողորմու-
թիւն իմ ոչ արգելից [4]ի նոցանէ, եւ ոչ
35 նենգեցից ճշմարտութեան իմում։ Եւ
ոչ անարգեցից զուխտ իմ, եւ ինչ որ
ելանէ ընդ շրթունս իմ՝ զայն ոչ արհա-
36 մարհեցից։ Միանգամ երդուայ ի սրբու-
թիւն իմ, թէ Դաւթի ես ոչ ստեցից։
37 Զաւակ նորա յաւիտեան կացցէ, եւ ա-
թոռ նորա որպէս արեգակն առաջի իմ,
38 Որպէս լուսին զի հաստատեալ է յաւի-
տեան վկայ հաւատարիմ յերկինս։[5]
39 Իսկ արդ դու մերժեցեր եւ անարգե-
ցեր եւ ընդ վայր հարեր զօծեալ քո։
40 Դարձուցեր զուխտ ի ծառայէ քումմէ,
պղծեցեր յերկրի [6]զսրբութիւն նորա։
41 Քակեցեր զամենայն պարիսպս նորա,
եւ եդիր զամուրս նորա ի զողումն։
42 Յափշտակեցին զնա անցաւորք ճանա-
պարհի, եղեւ նա նախատ դրացեաց իւ-
43 րոց։ Բարձր արարեր զաջ նեղչաց նո-
րա, ուրախ արարեր զամենայն թշնա-
44 միս նորա։ Դարձուցեր [7]զօգնութիւն
ի սրոյ՝՝ նորա, եւ ոչ ընկալար զնա ի
45 պատերազմի։ Անարգեցեր զսրբութիւն
նորա, եւ զաթոռ նորա յերկիր կործա-
46 նեցեր։ Նուաղ արարեր զաւուրս [8]ժա-
մանակաց նորա, եւ հեղեր զնովաւ զա-
մօթ։[5]
47 Մինչեւ յե՞րբ դարձուցանես զերեսս
քո ի սպառ, բորբոքեսցի՞ որպէս հուր
48 բարկութիւն քո։ Իսկ արդ յիշեա [9]եւ
տես թէ ո՛վ է իմ հանգիստ. միթէ ի
զո՞ւր ինչ՝՝ ստեղծեր զամենայն որդիս
49 մարդկան։ Ո՞վ է մարդ որ կեցցէ եւ ոչ
տեսցէ զմահ, կամ փրկեսցէ զանձն իւր
50 ի ձեռաց դժոխոց։[5] Ո՞ւր են ողորմու-
թիւնք քո, Տէր, առաջինք, զոր եր-
դուար Դաւթի ճշմարտութեամբ քով։
51 Յիշեա զնախատինս ծառայից քոց, զոր
ընկալայ ի ծոց իմ յազգաց բազմաց։
52 Զոր նախատեցին թշնամիք քո, Տէր,
53 նախատեցին փոխանակ օծելոյ քո։ Օրհ-
նեալ Տէր [2]Աստուած յաւիտեանս յա-
ւիտենից։ Եղիցի, եղիցի։

## ՍԱՂՄՈՍ ՁԹ (Ղ)

*Աղօթք Մովսիսի առն Աստուծոյ։*

1 Տէր, ապաւէն եղեր մեր ազգէ մինչեւ
2 յազգ։ Մինչչեւ լերինք հաստատեալ էին,
եւ մինչչեւ ստեղծեալ էր զերկիր եւ
զամենայն տիեզերս, յաւիտենից մինչեւ
3 յաւիտեանս դու [10]ես. Եւ մի՛ դարձու-
ցաներ զմարդ ի տառապանս՝՝. եւ ասա-
ցեր, Դարձարուք [2]առ իս՝՝, որդիք մարդ-
4 կան։ Հազար ամ յաչս Տեառն որպէս
օր երեկի զի անց, որպէս պահ մի գի-
5 շերոյ. [11]Եւ ամք նոցա անարգութեամբ՝՝
եղիցին. ընդ առաւօտս որպէս զալարի
6 [12]բուսցին. Ընդ առաւօտս որպէս զալարի
զուարճասցին եւ ծաղկեսցին, ընդ ե-
րեկոյս թարշամեսցին, չորասցին եւ անկ-
7 ցին։ Նուաղեցաք մեք ի բարկութենէ
քումմէ, եւ ի սրտմտութենէ քումմէ
8 խռովեցաք։ Եդիր զմեղս մեր առաջի

[1]Եբր. երկիւղածս [2]Յեբր. զօրաւոր [3]Եբր. իմ եւ վէմ
[4]Եբր. ի նմանէ [5]Եբր.-յետ այնր յաւելու, Հանգիստ
[6]Կամ, զպսակ [7]Եբր. զսուր սուսերի [8]Եբր. մանկ-
կութեան [9]Եբր. քանոյ ժամանակի եմ. յո՞ր
ունայնութիւն [10]Եբր. ես Աստուած։(3) Դարձու-
ցեր զմարդ ի հող [11]Եբր. Ողողես զնոսա,
քուն [12]Եբր. որ բուսանի

քո, եւ [1]զկեանս մեր ի լոյս երեսաց
9 քոց ։ [2]Ամենայն աւուրք մեր նուաղե-
ցան, եւ ի բարկութենէ քումմէ խռո-
վեցաք. ժամանակ ամաց մերոց անգա-
10 գար որպէս սարդի. Եւ թիւ աւուրց"
ամաց մերոց ի նոսա եւթանասուն ամ.
ապա թէ առաւել եւս՝ ութսուն ամ.
որ ինչ աւելի քան զայն՝ ցաւօք եւ հե-
ծութեամբ. [3]եկն ի վերայ մեր հեզութիւն
11 եւ խրատեցաք" Իսկ արդ ո՞ գիտասցէ զզօ-
րութիւն բարկութեան քո, եւ կամ յահէ
քումմէ զսրտմտութիւն քո համարեսցի
12 [4]Այսպէս ցոյց ինձ զաջ քո, եւ որ խոնարհ-
են սրտիւք՝ զիմաստութիւնս քո"։
13 Դարձ, Տէր, մինչեւ յե՞րբ. մխիթար-
14 եաց ի ծառայս քո ։ [5]Լցաք առաւօտու
ողորմութեամբ քո, [6]ցնծացաք եւ ու-
րախ եղաք" զամենայն աւուրս կե-
15 նաց մերոց ։ Ուրախ [7]եղաք փոխանակ
աւուրցն յորս խոնարհ արարեր զմեզ,
եւ ամացն՝ յորս տեսաք զչարչարանս ։
16 [8]Հայեաց, Տէր, ի ծառայս քո եւ ի գործս
ձեռաց քոց, եւ առաջնորդեա որդւոց"
17 նոցա ։ Եղիցի լոյս Տեառն Աստուծոյ ի
վերայ մեր. զգործս ձեռաց մերոց ու-
ղիղ արա ի մեզ, Տէր, զգործս ձեռաց
մերոց աջողեա մեզ ։

## ՍԱՂՄՈՍ Ղ (Ղ.Ա)

[9]Օրհնութիւն գովութեան Դաւթի ։"

1 Որ բնակեալ է յօգնութեան Բարձրե-
լոյն, ընդ հովանեաւ [10]Աստուծոյ յեր-
2 կնից հանգիցէ ։ Ասասցէ" Տեառն, Ըն-
դունելի իմ ես, ապաւէն իմ Աստուած,
3 եւ ես յուսամ ի նա ։ Նա փրկեսցէ [11]զիս
յորոգայթէ որսողին, եւ [12]ի բանից խռո-
4 վութենէ" ։ Ի թիկնամէջս իւր ընկալցի
զքեզ, ի հովանի թեւոց նորա յուսաս-
ցիս. որպէս զէն՝ շուրջ եղիցի զքեւ
5 ճշմարտութիւն նորա ։ Ոչ երկիցես դու
յերկիւղէ գիշերի, եւ ոչ ի նետէ որ թռչի
6 ի տուէ, [13]Ցիրէ որ շրջի ի խաւարի, [14]ի
դայթակղութենէ դիւին" ի հասարակ ա-
7 ւուր ։ Անկցին ի կողմանէ քումմէ հա-
զարք, եւ բեւրք ընդ աջմէ քումմէ, եւ
8 առ քեզ ինչ ոչ մերձեսցին ։ Բայց միայն
աչօք քովք հայեսցիս դու, եւ զհատու-
ցումն մեղաւորաց տեսցես ։
9 Զի դու, Տէր, յոյս իմ ես. զԲարձրեալն
10 արարեր ապաւէն քեզ. Ոչ հասցեն առ քեզ
չարք, եւ տանջանք մի՛ մերձեսցին ի յարկս
11 քո ։ Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է
վասն քո, պահել զքեզ յամենայն ճա-
12 նապարհս քո ։ Ի բազուկս իւրեանց ըն-
կալցին զքեզ, զի մի՛ երբեք հարցես
13 զքարի զոտն քո ։ Ի վերայ [15]իժից եւ
քարբից գնասցես դու, առ ոտն կոխես-
ցես զառեւծն եւ զվիշապն ։
14 Քանզի յիս յուսացաւ եւ փրկեցից
զնա, հովանի եղէց նմա, զի ծանեաւ
15 զանուն իմ ։ Կարդասցէ առ իս՝ եւ ես
լուայց նմա, եւ առ նմա եղէց ի նե-
ղութեան. փրկեցից, փառաւոր արա-
16 րից զնա. Երկայն աւուրբք լցուցից զնա
եւ ցուցից նմա զփրկութիւն իմ ։

## ՍԱՂՄՈՍ ՂԱ (ՂԲ)

1 Սաղմոս օրհնութեան աւուր շաբաթու ։

2 Բարի է խոստովան լինել Տեառն, սաղ-
մոս ասել անուան քում, Բարձրեալ ։
3 Պատմել առաւօտու զողորմութիւնս քո,
4 եւ զճշմարտութիւնս քո ի գիշերի ։ Տա-
սնաղեաւ սաղմոսարանաւ, ի ձայն օրհ-
5 նութեան գովել ։ Ուրախ արարեր զիս
Տէր, յարարածս քո, եւ ի գործս ձե-
6 ռաց քոց ցնծացայց ։ Որպէս զի՛ մեծ են
գործք քո, Տէր, եւ յոյժ խոր են խոր-
7 հուրդք քո ։ Այր անզգամ զայս ոչ ծա-
նիցէ, եւ անմիտն զայս ոչ առնու ի
8 միտ ։ Ի բուսանել մեղաւորաց որպէս
խոտ, ի ծաղկել այնոցիկ ոյք գործեն
զանօրէնութիւն, սատակեսցին յաւի-
9 տեանս յաւիտենից. Եւ դու բարձրեալ
ես յաւիտեանս, Տէր ։ Զի ահա թշնա-
միք քո, Տէր, զի ահա թշնամիք քո
10 կորիցեն. Ցրուեսցին ամենեքեան ոյք
11 գործեն զանօրէնութիւն ։ Բարձր [16]եղիցի
որպէս միեղջերուի եղջիւր իմ, եւ ծե-
րութիւն իմ" ի ձէթ պարարտութեան ։
12 Ետես ակն իմ ի թշնամիս իմ ոյք յա-

[1]Եբր. զծածուկս [2]Եբր. Զի ամենայն աւուրք մեր անցին ի բարկութեան քում. սպառեցաք զամս մեր իբրեւ ձայն ։(10) Աւուրք [3]Եբր. զի հատան վաղվաղակի. և թռանիմք [4]Եբր. Թուել զաւուրս մեր այնպէս ուսոյ մեզ, զի ածիցուք սիրտ իմաստութեան ։ [5]Եբր. Յագեցո զմեզ [6]Եբր. զի ցնծասցուք եւ ուրախ եղիցուք [7]Եբր. արա զմեզ [8]Եբր. Երեւեսցին ի ծառայս քո գործք քո, եւ փառք քո՝ յորդիս [9]Յեբր. պակաս [10]Եբր. Ամենակալին հանգիցէ ։ (2) Ասացից [11]Եբր. զքեզ [12]Եբր. յապականիչ ժանտէ

[13]Եբր. ի ժանտէ [14]Եբր. ի հարուածոյ որ սատակէ [15]Եբր. առիւծուց [16]Եբր. արասցես զեղջիւր իմ որպէս միեղջերուի, եւ օծայ

րուցեալ են ի վերայ իմ չարութեամբ ,
13 ի նոսա լուիցէ ունկն իմ ։ Արդարքն որ-
պէս զարմաւենիս ծաղկեսցին , որպէս
զմայրսն Լիբանանու բազումք եղիցին ։
14 Տնկեալք [1]եղիցին ի տան Տեառն , [1]եւ
ի գաւիթս Աստուծոյ մերոյ ծաղկեսցին ։
15 Եւս եւ բազումք եղիցին ի ծերութիւն
պարարտութեան , գիրգք եւ փափուկք
16 եղիցին , Ի պատմել [2]ուղիղ է Տէր Աս-
տուած մեր՝՝ եւ ոչ գոյ ի նմա անիրա-
ւութիւն ։

## ՍԱՂՄՈՍ ՂԲ (ՂԳ)

[1]Յօրն առաջին շաբաթու յոր հաստատե-
ցաւ երկիր . օրհնութիւն գովութեան
Դաւթի ։՝՝

1 Տէր թագաւորեց՝ վայելչութիւն զգե-
ցաւ , զգեցաւ Տէր զօրութիւն՝ ընդ մէջ
2 իւր ածաւ ։ Հաստատեաց զաշխարհ զի
մի՛ սասանեսցի . պատրաստ է աթոռ քո
3 ի սկզբանէ , յաւիտենից դու ես ։ Ամ-
բարձան գետք , Տէր , եւ ամբարձին գետք
զձայնս իւրեանց . յարիցեն գետք ի
4 գնացս իւրեանց ։ [3]Ի ձայնէ ջուրց բազ-
մաց , սքանչելի եղեն զբօսանք ծովու .
սքանչելի ես դու , Տէր, ի բարձունս ։՝՝
5 Վկայութեանց քոց մեք յոյժ հաւատա-
ցաք . տան քում վայելէ սրբութիւն ,
Տէր , ընդ երկայն աւուրս ։

## ՍԱՂՄՈՍ ՂԳ (ՂԴ)

[1]Սաղմոս Դաւթի . չորեքշաբաթու ։՝՝

1 Աստուած՝ վրէժխնդիր Տէր , Աստուած
2 վրէժխնդիր [4]յայտնեցաւ ։ Բարձր լեր որ
դատիս զերկիր , հատո զհատուցումն
3 ամբարտաւանից ։ Մինչեւ յե՞րբ մեղա-
ւորք , Տէր , մինչեւ յե՞րբ մեղաւորք
4 պարծեսցին ։ Բաբբասեալ խօսեսցին զա-
նիրաւութիւն , խօսեսցին ամենեքեան
5 որ գործեն զանօրէնութիւն ։ Զժողո-
վուրդս քո , Տէր , խոնարհ արարին , եւ
6 զժառանգութիւն քո չարչարեցին ։ Զայ-
րին եւ զպանդուխտն սպանին , զորբսն
7 կոտորեցին . Եւ ասացին , Ոչ տեսանէ
զայս Տէր , եւ ոչ ի միտ առնու Աստուած
8 Յակոբայ ։ Իմացարուք, անզգամք ժո-
ղովրդոց եւ անմիտք , մինչեւ յե՞րբ ոչ
9 առնուք ի միտ ։ Որպէս զի թէ որ անկեաց
զունկն՝ ինքն ո՞չ լուիցէ , կամ որ ստեղծ
10 զակն՝ ինքն ո՞չ տեսանիցէ ։ Որ խրատէ
զազգս՝ որպէս թէ ո՞չ յանդիմանեսցէ ,
11 որ ուսուցանէ մարդոյ գիտութիւն։ Տէր
ճանաչէ զխորհուրդս մարդկան՝ զի են
ընդունայն ։
12 Երանի՛ մարդոյ զոր խրատես դու, Տէր ,
եւ յօրինաց քոց ուսուցանես դու նմա ։
13 [5]Ցածուցանես դու նմա զաւուրս՝՝ չարու-
թեան , մինչեւ փորեսցի խորխորատ մե-
14 ղաւորի ։ Ոչ մերժէ Տէր զժողովուրդ
իւր , եւ զժառանգութիւն իւր ոչ առնէ
15 անտես ։ Մինչեւ դարձցին իրաւունք
յարդարութիւն , ընկալցին զնա ամենե-
16 քեան ոյք ուղիղ են սրտիւք ։ Ո՞ յարիցէ
ընդ իս ի վերայ չարաց , կամ ո՞ [6]հաւա-
սարիցէ ինձ ի վերայ՝՝ այնոցիկ որ գոր-
17 ծեն զանօրէնութիւն։ Եթէ ոչՏեառն օգ-
նեալ էր ինձ , փոքր մի եւս բնակեալ
18 էր անձն իմ ի դժոխս ։ Եթէ ասէի թէ
Ահա սասանեցան ոտք իմ , ողորմու-
19 թիւն քո , Տէր , օգնէր ինձ ։ Ըստ բա-
զում ցաւոց սրտի իմոյ՝ մխիթարութիւն
քո ուրախ առնէր զանձն իմ ։
20 Մի՛ հաւասարեսցի՞ քեզ աթոռ անօրէ-
նութեան , ո պատճառէ զվաստակս ընդ-
21 դէմ հրամանի ։ Որսացան զանձն արդա-
րոյ , եւ զարիւն անբիծ պարտաւոր առ-
22 նէին ։ Եղեւ Տէր ապաւէն իմ , Աստուած
23 օգնական յուսոյ իմոյ ։ Հատուսցէ նոցա
Տէր ըստ անօրէնութեան նոցա , եւ ըստ
չարութեան նոցա կործանեսցէ [7]զնոսա
Տէր Աստուած մեր ։

## ՍԱՂՄՈՍ ՂԴ (ՂԵ)

[1]Օրհնութիւն գովութեան Դաւթի ։՝՝

1 Եկայք ցնծասցուք ի Տէր , աղաղակես-
2 ցուք առ Աստուած փրկիչ մեր ։ Կան-
խեսցուք առաջի նորա խոստովանու-
թեամբ , սաղմոսիւք աղաղակեսցուք
3 առ նա ։ Աստուած մեծ է Տէր , Թագա-
4 ւոր մեծ ի վերայ ամենայն [8]երկրի ։ Ի
ձեռս նորա են [9]ամենայն տիեզերք՝՝ երկ-
րի , եւ բարձրութիւնք լերանց նորա են ։
5 Նորա է ծով եւ նա արար զնա , եւ զցա-
6 մաք ձեռք նորա ստեղծին ։ Եկայք եր-
կիր պագցուք նմա , [10]անկցուք եւ լաց-
ցուք՝՝ առաջի Տեառն արարչին մերոյ ։
7 Նա ինքն է [1]Տէր Աստուած մեր , մեք

[1] Եբր. [illegible] [2] Եբր. եթէ Ուղիղ է Տէր. Վէմ իմ է [3] Եբր. Քան զձայնս ջուրց բազմաց, սաստիկ մրրկաց ծովու հզօր է Տէր ի բարձունս ։ [4] Եբր. յայտնեաց

[5] Եբր. Հանգուցանես զնա յաւուրցն [6] Եբր. կացցէ վասն իմ հակառակ [7] Եբր. զնոսա , կործանեսցէ զնոսա [8] Եբր. աստուածոց [9] Եբր. խորք [10] Եբր. եւ անկցուք . ծունր դիցուք

ժողովուրդք ձեռին նորա, եւ խաշն ա-
րօտի նորա։
8 Այսօր եթէ ձայնի նորա լսիցէք,
մի՛ խստացուցանէք զսիրտս ձեր որպէս
ի Դառնութեանն, յաւուրն փորձութեան
9 յանապատին, Ուր փորձեցին զիս հարքն
ձեր, քննեցին զիս եւ տեսին զգործս
10 իմ։ Զքառասուն ամ [1]ջանացայ ընդ
ազգին ընդ այնմիկ՝ եւ ասացի, Միշտ
մոլորեալ են սրտիւք. եւ նոքա ոչ ծա-
11 նեան զճանապարհս իմ։ Որպէս երդուայ
ի բարկութեան իմում, թէ Մտցեն ի
հանգիստ իմ։

## ՍԱՂՄՈՍ ՂԵ (ՂԶ)

[2]Սաղմոս Դաւթի. ի ժամանակի զի տա-
ճարն շինեցաւ։՝

1 Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր. օրհ-
2 նեցէք զՏէր ամենայն երկիր։ Օրհնե-
ցէք զՏէր եւ օրհնեցէք զանուն նորա,
աւետարանեցէք օր ըստ օրէ զփրկու-
3 թիւն նորա։ Պատմեցէք ի հեթանոսս
զփառս նորա, յամենայն ժողովուրդս
4 զսքանչելիս նորա։ Մեծ է Տէր եւ օրհ-
նեալ է յոյժ, ահաւոր է նա ի վերայ
5 ամենայն [3]կռոց. Ամենայն կուռք հե-
թանոսաց դեւք՝ են, այլ Տէր զերկինս
6 արար։ [4]Խոստովանութիւն եւ վայել-
չութիւն է առաջի նորա, [5]սրբութիւն
եւ մեծվայելչութիւն ի սրբութեան նո-
7 րա։ Մատուցէք Տեառն, տոհմք ազգաց,
մատուցէք Տեառն զփառս եւ զպատիւ։
8 Մատուցէք Տեառն զփառս անուան նո-
րա. առէք պատարագս եւ մտէք ի սրահս
9 նորա. Երկիր պագէք Տեառն [6]ի գաւիթս
սրբութեան նորա. եւ խռովեսցի յերե-
10 սաց նորա ամենայն երկիր։ Ասացէք ի
հեթանոսս թէ Տէր թագաւորեաց, հաս-
տատեաց զաշխարհ զի մի՛ սասանեսցի,
եւ դատի զժողովուրդս [2]իւր ուղղու-
11 թեամբ։ Ուրախ եղիցին երկինք եւ
ցնծասցէ երկիր, զուարճասցի ծով լրիւ
12 իւրով. Ցնծասցեն դաշտք եւ ամենայն
որ է ի նոսա. յայնժամ ցնծասցեն ամե-
13 նայն ծառք անտառի՝ Ցերեսաց Տեառն
զի գայ, եւ գայ նա ի դատել զերկիր
դատի զաշխարհ իրաւամբք, եւ զժողո-
վուրդս [2]ամենայն ճշմարտութեամբ իւրով։

[1]Եբր· տաղտկացայ յազգէն յայնմանէ [2]Յեբր· չիք [3]Եբր· դից· (5)Ամենայն դիք հեթանոսաց ընդունայն [4]Եբր· Փառք [5]Եբր· զօրութիւն
[6]Եբր· ի վայելչութիւն

## ՍԱՂՄՈՍ ՂԶ (ՂԷ)

[2]Սաղմոս Դաւթի. ի ժամանակի զի եր-
կիրն հաստատեցաւ։՝

1 Տէր թագաւորեաց, ցնծասցէ երկիր,
2 ուրախ եղիցին կղզիք բազումք։ Ամպ
եւ մէգ շուրջ են զնովաւ, յիրաւունս եւ
յարդարութիւն ուղղեալ է աթոռ նորա։
3 Հուր առաջի նորա գնասցէ, եւ այրեսցէ
4 շուրջ զթշնամիս նորա։ Երեւեցան փայ-
լատակունք նորա աշխարհի, եսես եւ
5 սասանեցաւ երկիր։ Լերինք որպէս մոմ
հալեցին յերեսաց Տեառն, յերեսաց
6 Տեառն ամենայն երկրի։ Պատմեսցեն
երկինք զարդարութիւն նորա, եւ տեսցեն
7 ամենայն ժողովուրդք զփառս նորա։ Ա-
մաչեսցեն ամենեքեան որք երկիր պա-
գանեն կռոց, եւ որք պարծին ի դրօ-
շեալս իւրեանց. երկիր պագցեն նմա
ամենայն [7]հրեշտակք նորա՝։
8 Լուաւ եւ ուրախ եղեւ Սիոն, եւ
ցնծասցեն դստերք Յուդայ վասն իրա-
9 ւանց քոց, Տէր։ Զի դու բարձրեալ
ես ի վերայ ամենայն երկրի, յոյժ բարձ-
րացար ի վերայ ամենայն [8]կռոց։
10 Որք սիրէք զՏէր՝ ատեցէք զչարու-
թիւն. պահէ Տէր զանձինս սրբոց իւ-
րոց, ի ձեռաց մեղաւորի փրկեսցէ զնո-
11 սա։ Լոյս ծագեաց արդարոց, ուղղոց
12 սրտիւք եղեւ ուրախութիւն։ Ուրախ ե-
ղերուք, արդարք, ի Տէր, եւ խոստովան
եղերուք յիշատակի սրբութեան նորա։

## ՍԱՂՄՈՍ ՂԷ (ՂԸ)

Սաղմոս [2]Դաւթի։

1 Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր, զի
սքանչելիս արար. փրկեաց զնա աջ իւր
2 եւ բազուկ սուրբ իւր։ Եցոյց Տէր զփրկու-
թիւն իւր, առաջի ազգաց յայտնեաց
3 զարդարութիւն իւր։ Յիշեաց զողորմու-
թիւն իւր [9]Յակոբայ, զճշմարտութիւն՝
իւր ի վերայ տանն Իսրայելի. եւ տեսին
ամենայն ծագք երկրի զփրկութիւն Ա-
4 ստուծոյ մերոյ։ Աղաղակեցէք առ Տէր,
ամենայն երկիր, օրհնեցէք, ցնծացէք եւ
5 սաղմոս ասացէք։ Սաղմոս ասացէք Ա-
ստուծոյ մերում օրհնութեամբ, օրհնու-
6 թեամբ եւ ի ձայն սաղմոսաց։ Ի ձայն
օրհնութեան կռածոյ փողոյ, օրհնու-
թեամբ, ցնծութեամբ եւ ի ձայն եղջեր

[7]Եբր· դիք [8]Եբր· դից [9]Եբր· և զճշմարտութիւն

փողոյ, աղաղակեցէք առաջի Թագաւո-
7 րին, Տեառն ։ Խռովեսցի ծով լրիւ իւ-
րով, տիեզերք եւ ամենայն բնակիչք
8 նորա ։ Եւ գետք ծափս հարցեն ի միա-
9 սին ձեռամբ, լերինք ցնծասցեն Առա-
ջի Տեառն, զի գայ եւ հասեալ է
Տէր ի դատել զերկիր ։ դատի զաշխարհս
արդարութեամբ, եւ զժողովուրդս [1]իւր
ուղղութեամբ ։

## ՍԱՂՄՈՍ ՂԸ (ՂԹ)

[1]Սաղմոս Դաւթի ։

1 Տէր թագաւորեաց, [2]բարկասցին ժողո-
վուրդք ։ որ նստի ի քերովբէս, սա-
2 սանեսցի երկիր ։ Տէր ի Սիոն մեծ է,
եւ բարձր է ի վերայ ամենայն ժողովրդոց ։
3 Խոստովան եղիցին անուան քում մեծի,
4 զի ահաւոր եւ սուրբ է ։ Եւ պատիւ
թագաւորի զիրաւունս սիրէ ։ դու պատ-
րաստեցեր զուղղութիւն, զիրաւունս
եւ զարդարութիւն Յակոբայ դու ա
5 րարեր ։ Բարձր արարէք զՏէր Աստուած
մեր, երկիր պագէք պատուանդանի ո-
6 տից նորա, զի սուրբ է ։ Մովսէս եւ Ա-
հարոն երիցունք նորա, Սամուէլ ընդ
այնոսիկ որ կարդան զանուն նորա ։ կար-
7 դային առ Տէր եւ նա լսէր նոցա, Եւ
ի սիւն ամպոյ խօսէր ընդ նոսա ։ պա-
հէին զվկայութիւնս նորա եւ զհրամանս
8 զոր ետ նոցա ։ Տէր, Աստուած մեր,
դու լսէիր նոցա ։ Աստուած, դու քաւիչ
լինէիր նոցա, վրէժխնդիր ի վերայ ամե-
9 նայն գործոց նոցա ։ Բարձր արարէք
զՏէր, Աստուած մեր, երկիր պագէք ի
լերան սուրբ նորա, զի սուրբ է Տէր
Աստուած մեր ։

## ՍԱՂՄՈՍ ՂԹ (Ճ)

1 Սաղմոս խոստովանութեան [1]Դաւթի ։

2 Աղաղակեցէք առ Տէր, ամենայն եր-
3 կիր, Ծառայեցէք Տեառն ուրախու-
թեամբ ։ մտէք առաջի նորա ցնծու-
թեամբ, ծաներուք զի նա է Տէր Ա-
ստուած մեր ։ Նա արար զմեզ եւ ոչ մեք
էաք, մեք ժողովուրդք եւ խաշն արօ-
4 տի նորա ։ Մտէք ընդ դրունս նորա խոս-
տովանութեամբ, եւ օրհնութեամբ ի
յարկս նորա ։ խոստովան եղերուք Տեառն,
5 եւ օրհնեցէք զանուն նորա ։ Քաղցր է
Տէր, յաւիտեան է ողորմութիւն նո-
րա ։ ազգէ մինչեւ յազգ է ճշմարտու-
թիւն նորա ։

## ՍԱՂՄՈՍ Ճ (ՃԱ)

Սաղմոս Դաւթի ։

1 Ողորմութիւն եւ զիրաւունս օրհնեցից
2 զքեզ, Տէր ։ սաղմոս ասացից ։ Եւ ի
միտ առից, ճանապարհ [3]անբիծ մինչեւ
եկեսցէ՞ առ իս ։ զի գնայի ես յամբծու-
3 թեան սրտի իմոյ ի մէջ տան իմոյ ։ Ոչ
եդի առաջի աչաց իմոց իրս անիրաւու-
թեան, այք առնէին զանցութիւն՝ ա-
4 տեցի, ոչ մերձեցաւ առ իս ։ Որ թիւրն էր
սրտիւ՝ խոտորեալ յինէն ։ անզգամին՝
5 ես ինչ ոչ փոյթ առնէի ։ Որ խօսէր զաղա-
գընկերէ իւրմէ, զնա բացէ ի բաց հա-
լածէի ։ որ [4]ամբարտաւան էր աչօք եւ
ագահ սրտիւ, ընդ նմա եւ հաց ոչ ու-
6 տէի՞ ։ Աչք իմ ի հաւատացեալս երկրի,
զի նստցին նոքա ընդ իս ։ որ գնայր ի
ճանապարհ անբիծ, նա պաշտէր զիս ։
7 Ոչ բնակէր ի մէջ տան իմոյ՝ որ առնէր
զամբարտաւանութիւն, որ խօսէր զա-
նիրաւութիւն՝ չէր յաջողեալ նմա ա-
8 ռաջի աչաց իմոց ։ Ընդ առաւօտս սպա-
նանէի զամենայն մեղաւորս երկրի, զի
սատակեցից ի քաղաքի Տեառն զամենե-
սեան որք գործեն զանօրէնութիւն ։

## ՍԱՂՄՈՍ ՃԱ (ՃԲ)

1 Աղօթք ուրկի, իբրեւ ձանձրասցի եւ
առաջի Տեառն սփռեսցէ զխնդրուածս
իւր ։

2 Տէր, լուր աղօթից իմոց, աղաղակ իմ
3 առ քեզ եկեսցէ ։ Մի դարձուցաներ զե-
րեսս քո յինէն յաւուր նեղութեան ի-
մոյ ։ խոնարհեցո առ իս զունկն քո, յա-
րում աւուր կարդամ առ քեզ՝ փութա-
4 զակի լուր ինձ ։ Սպառեցան որպէս ծուխ
աւուրք իմ, եւ ոսկերք իմ որպէս խոփ
5 չորացան ։ Հարաւ որպէս խոտ եւ ցա-
մաքեցաւ սիրտ իմ, մոռացայ ուտել զհաց
6 իմ ։ Ի ձայնէ հեծութեան իմոյ, կցեցաւ
7 ոսկր իմ ի մարմին իմ ։ Նմանեցայ ես
հաւալաւն յանապատի ։ եղէ ես որպէս
8 բու յաւերակի ։ Տքնեցայ եւ եղէ ես որ-
9 պէս ճնճղուկ միայն ի տանիս ։ Նախատե-
ցին զիս թշնամիք իմ զօրհանապազ, եւ
10 [5]գովիչք իմ ինեւ երդնուին՞ ։ Զմոխիր որ-

[1] Յեբր. պակաս [2] Եբր. դողասցին

[3] Եբր. անբիծ. ե՞րբ եկեսցես [4] Եբր. բարձր էր աչօք և ամբարտաւան սրտիւ, ոչ հանդուրժէի նմա
[5] Եբր. որ յառուցեալ են ինձ, անիծանեն զիս

պէս զհաց կերայ, եւ զըմպելին իմ ար-
11 տասուօք խառնեցի՝ Ցերեսաց բարկու-
թեան սրտմտութեան քո, զի դու բարձ-
12 րացուցեր եւ խորտակեցուցեր զիս։ Ա-
ւուրք իմ որպէս հովանի անցին, եւ ես
որպէս խոտ ցամաքեցայ։
13 Դու, Տէր, յաւիտեան կաս, եւ յի-
14 շատակ քո ազգէ մինչեւ յազգ։ Դու
յարուցեալ գթասցիս ի վերայ Սիոնի,
ժամանակ գթալոյ նորա, հասեալ է ժամ։
15 Հաճեցան ծառայք քո ընդ քարինս նո-
16 րա, եւ ի հողս նորա գթասցին։ Երկի-
ցեն հեթանոսք յանուանէ քումմէ, եւ
ամենայն թագաւորք երկրի ի փառաց
17 քոց։ Շինէ Տէր զՍիոն, եւ երեւեսցի
18 փառօք իւրովք ի նմա։ Հայեցաւ նա
յաղօթս խոնարհաց, եւ ոչ արհամար-
19 հեաց զխնդրուածս նոցա։ Գրեսցի այս
յազգ այլ, ժողովուրդ [1]զոր ստացեալ"
20 է՝ օրհնեսցէ զՏէր։ Հայեցաւ նա ի բար-
ձանց ի սրբութենէ իւրմէ, Տէր յերկնից
21 յերկիր հայեցաւ, Լսել զհեծութիւն կա-
պելոց, եւ արձակել զորդիս մահապար-
22 տաց, Պատմել ի Սիոն զանուն Տեառն,
եւ զօրհնութիւնս նորա յԵրուսաղէմ,
23 Ժողովել ժողովրդոց ի միասին, եւ թա-
24 գաւորաց ծառայել Տեառն։ [2]Պատաս-
խանի ետ նմա ի ճանապարհի զօրու-
թեան իւրոյ, զնուազութիւն աւուրց
25 իմոց ասա ինձ, Եւ՞ մի՛ հաներ զիս ի
կէս աւուրց իմոց. զի ազգէ յազգ են
26 ամք քո։ Ի սկզբանէ, Տէր, զհիմունս
երկրի հաստատեցեր, եւ գործք ձեռաց
27 քոց երկինք են։ Նոքա անցանեն, եւ
դու կաս եւ մնաս յաւիտեան. ամենե-
քեան որպէս զձորձս մաշեսցին, որպէս
վերարկուս փոխեսցես զնոսա եւ փո-
28 խեսցին։ Բայց դու նոյն իսկ ես, եւ
29 ամք քո ոչ անցանեն։ Որդիք ծառայից
քոց [3]բնակեսցեն ի նմա, եւ զաւակք
նոցա յաւիտեան յաջողեսցի"։

## ՍԱՂՄՈՍ ՃԲ (ՃԳ)

Սաղմոս Դաւթի։

1 Օրհնեա, անձն իմ, զՏէր, եւ ամենայն
2 [4]ոսկերք իմ զանուն սուրբ նորա։ Օրհ-
նեա, անձն իմ, զՏէր, եւ մի՛ մոռա-
3 նար զամենայն տուրս նորա։ Ո քաւէ
զմեղս քո, բժշկէ զամենայն հիւանդու-
4 թիւնս քո։ Ո փրկէ յապականութենէ
զկեանս քո, պսակէ զքեզ ողորմու-
5 թեամբ եւ գթութեամբ։ Ո լնու ի բա-
րութենէ [5]զցանկութիւն քո, նորոգես-
ցի որպէս արծուոյ մանկութիւն քո։
6 Առնէ ողորմութիւնս Տէր, եւ իրա-
7 ւունս ամենայն զրկելոց։ Եցոյց Տէր
զճանապարհս իւր Մովսիսի, եւ որդ-
8 ւոցն Իսրայելի զկամս իւր։ Գթած, ո-
ղորմած է Տէր, երկայնամիտ եւ բա-
9 զումողորմ։ Ոչ ի սպառ բարկանայ Տէր,
10 եւ ոչ յաւիտեան պահէ ոխս։ Ոչ ըստ
մեղս մեր արար մեզ, եւ ոչ ըստ անօ-
11 րէնութեան մերում հատոյց մեզ։ Այլ
որպէս բարձր են երկինք յերկրէ, այն-
պէս զօրացոյց Տէր զողորմութիւն իւր
12 ի վերայ երկիւղածաց իւրոց։ Որչափ հեռի
են արեւելք յարեւմտից, այնպէս հեռի
արար ի մէնջ զանօրէնութիւնս մեր։
13 Որպէս գթայ հայր ի վերայ որդւոց իւ-
րոց, այնպէս գթասցի Տէր յերկիւղածս
14 իւր։ Զի նա գիտաց զստեղծուածս մեր,
15 եւ յիշեաց թէ հող եմք։ Մարդոյ՝ որ-
պէս խոտոյ են աւուրք իւր, որպէս ծա-
16 ղիկ վայրի՝ այնպէս ծաղկէ։ Ծնչէ ի նմա
հողմ՝ եւ ոչ է, եւ ոչ եւս երեւի տե-
17 ղի նորա։ Բայց ողորմութիւն Տեառն
յաւիտեանս յաւիտենից ի վերայ երկիւ-
ղածաց իւրոց, եւ արդարութիւն նորա
18 յորդւոց մինչեւ յորդիս։ Որք պահեն
զուխտ նորա, յիշեն զպատուիրանս նո-
19 րա եւ առնեն զնա։ Տէր յերկինս պատ-
րաստեաց զաթոռ իւր, արքայութիւն
20 նորա ամենեցուն տիրէ։ Օրհնեցէք զՏէր,
ամենայն հրեշտակք նորա, հզօրք զօ-
րութեամբ՝ որք առնէք զբան նորա, ի լսել
21 ձայնի պատգամաց նորա։ Օրհնեցէք
զՏէր ամենայն զօրութիւնք նորա, պաշ-
տօնեայք եւ արարօղք կամաց նորա։
22 Օրհնեցէք զՏէր, ամենայն գործք նորա,
ընդ ամենայն տեղիս է՝ տէրութիւն նո-
րա. օրհնեա, անձն իմ, զՏէր։

## ՍԱՂՄՈՍ ՃԳ (ՃԴ)

[6]Սաղմոս Դաւթի. ի վերայ աշխարհա-
գործ արարածոց։"

1 Օրհնեա, անձն իմ, զՏէր. Տէր Աս-
տուած իմ, մեծ եղեր յոյժ. [7]խոստո-
վանութիւն եւ մեծվայելչութիւն զգե-

[1] Եբր. որ լինելոց [2] Եբր. Տառապեցոյց ի ճանապարհի զզօրութիւն իմ. Նուազեցոյց զաւուրս իմ։ (25) Ասացի, Աստուած իմ, [3] Եբր. բնակեսցեն, եւ զաւակ նոցա առաջի քո հաստատեսցի [4] Եբր. Ներքոյք

[5] Կամ. զծերութիւն [6] Յ Եբր. պակասէ [7] Եբր. փառս

2 յար . Արկար զլոյս որպէս զօթոց , ձգե-
3 ցեր զերկինս որպէս խորան . Եւ արկեր
ի վերայ ջուրց զվերնայարկս նորա . ո
դնէ յամպս զգնացս իւր, եւ շրջի նա ի վերայ
4 թեւոց հողմոց ։ Ո առնէ զհրեշտակս իւր
հոգիս , եւ զպաշտօնեայս իւր ի հուր
5 կիզելոյ ։ Հաստատեաց զերկիր ի վերայ
հաստատութեան իւրոյ , զի մի՛ սասա-
6 նեսցի յաւիտեան ։ Խորք որպէս զգեստ
վերարկու է նորա , ի վերայ լերանց կաց-
7 ցեն ջուրք ։ Ի սաստէ քումմէ փախի-
ցեն , եւ ի ձայնէ որոտմանց քումմէ սար-
8 սիցեն ։ Ելանեն լեռնամամն եւ իջանեն
դաշտամամն , ի տեղի յոր հաստատեցեր
9 զնոսա ։ Սահման եդիր՝ եւ ոչ անցանեն,
եւ ոչ եւս դառնան ի ծածկել զերկիր ։
10 Առաքեցեր զաղբեւրս ընդ ձորձորս , ի
11 մէջ լերանց գնասցեն ջուրք , Արբուս-
ցանել զամենայն գազանս վայրի . յա-
12 գեսցեն ցիռք ի ծարաւս իւրեանց ։ Անդ
թռչունք երկնից բնակեսցեն , եւ ի մի-
ջոյ [1]վիմաց տացեն զձայնս իւրեանց ։
13 Արբուցանէ զլերինս ի յամբարանաց իւ-
րոց , ի պտղոյ գործոց իւրոց լցցի եր-
14 կիր ։ Բուսուցեր զխոտ անասնոց , զդա-
լարի ի ծառայութիւն մարդկան . հանել
15 զհաց յերկրէ . Գինի ուրախ [2]առնէ , եւղ"
զուարթ, եւ հաց հաստատէ զսիրտ մարդոյ ։
16 Յագեսցին ծառքն Տեառն, եւ մայրքն
17 Լիբանանու զորս դու անկեցեր ։ Անդ
թռչունք երկնից ձագս հանիցեն , եւ [3]բոյն
18 արագլի ապաւէն է նոցա" ։ Լերինք
բարձունք են եղջերուաց , եւ վէմք ա-
պաւէն նապաստակաց ։
19 Արարեր զլուսին վասն ժամանակի ,
արեգակն ծանեաւ զմուտ մտանելոյ իւ-
20 րոյ ։ Արարեր զխաւար եւ եղեւ գիշեր ,
ի նմա գնան ամենայն գազանք անտա-
21 ռի ։ Կորիւնք առիւծուց մռնչեն եւ
յափշտակեն , եւ խնդրեն յԱստուծոյ զկե-
22 րակուրս իւրեանց ։ Ի ծագել արեւու
ժողովեն , եւ ի մորիս իւրեանց դադա-
23 րեն ։ Ելանէ մարդ ի գործս իւր , եւ ի
վաստակս ձեռաց իւրոց մինչեւ յերեկոյ ։
24 Որպէս զի՛ մեծ են գործք քո , Տէր ,
զամենայն ինչ իմաստութեամբ արարեր,
եւ լցաւ երկիր ստեղծուածովք քովք ։
25 Այս ծով մեծ եւ անզորր . ի սմա զեռունք
որոց ոչ գոյ թիւ , գազանք մեծա-
26 մեծք եւ մանունք ։ Ի սմա եւ նաւք

[1] Եբր. ոստոց [2] Եբր. առնէ զսիրտ մարդոյ, եւղ առնէ զերեսս [3] Եբր. արագլի տուն են մայրք

գնան , վիշապն զոր ստեղծեր խաղալ
27 նովաւ ։ Ամենեքեան քեզ սպասեն , եւ
դու տաս զկերակուր նոցա ի ժամու ։
28 Տաս դու նոցա եւ կերակրին , բանաս
զձեռն քո , եւ կերակրես զամենեսեան
29 կամաւք քովք ։ Դարձուցանես զերեսս քո
ի նոցանէ՝ եւ խռովին . հանես զոգի ի
նոցանէ՝ պակասին եւ ի հող դառնան ։
30 Առաքես զոգի քո եւ ստանաս զնոսա ,
եւ նորոգես զերեսս երկրի ։
31 Եղիցին փառք Տեառն յաւիտեան ,
32 Տէր ուրախ եղիցի յարարածս իւր ։ Ո
հայի յերկիր եւ տայ դողալ սմա , մեր-
33 ձի ի լերինս եւ ծխեսցին ։ Օրհնեցից զՏէր
ի կեանս իմ , սաղմոս ասացից Աստու-
34 ծոյ իմոյ մինչեւ եմ ես ։ [4]Քաղցր եղիցի
նմա օրհնութիւն" իմ , եւ ես ուրախ
35 եղէց ի Տէր ։ Պակասեսցին մեղաւորք
յերկրէ , եւ անպարիշտք մի՛ եւս գտցին
ի նմա ։ Օրհնեա, անձն իմ, զՏէր ։ Ալէ-
լուիա ։

## ՍԱՂՄՈՍ ՃԴ (ՃԵ)

1 Խոստովան եղերուք Տեառն եւ կար-
դացէք զանուն նորա , պատմեցէք ի հե-
2 թանոս զգործս նորա ։ Օրհնեցէք եւ
սաղմոս ասացէք նմա , պատմեցէք զա-
3 մենայն սքանչելիս նորա . Եւ գովեցա-
րուք յանուն սուրբ նորա . ուրախ եղի-
ցին սիրտք այնոցիկ ոյք խնդրեն զՏէր ։
4 Խնդրեցէք զՏէր եւ [5]հզօրք եղերուք" , եւ
խնդրեցէք զերեսս նորա յամենայն ժամ ։
5 Յիշեցէք զսքանչելիս նորա զոր արար ,
զարուեստս եւ զիրաւունս բերանոյ նո-
6 րա ։ Զաւակն Աբրահամեան՝ ծառայք նո-
ցա , որդիք Յակոբայ՝ ընտրեալք նորա ։
7 Նա ինքն է Տէր Աստուած մեր , յամե-
նայն երկրի են իրաւունք նորա ։
8 Յիշեաց յաւիտենից զուխտ իւր , եւ
զբանն զոր պատուիրեաց մինչեւ ի հա-
9 զար [6]ամ ։ Զուխտն զոր եդ ընդ Աբրա-
համու , եւ զերդումն իւր ընդ Իսահա-
10 կայ ։ Հաստատեաց առ Յակոբ զհրա-
ման իւր , եւ առ Իսրայէլ զուխտ իւր
11 յաւիտենից . Ասէ , [7]Ձեզ տաց զերկիրն
Քանանու , զվիճակ ժառանգութեան ձե-
12 րոյ . Զի էին նոքա թուով սակաւ ,
13 նուաղք եւ պանդուխտք ի նմա . Անցին
նոքա ազգէ յազգ , ի թագաւորութենէ
14 ի ժողովուրդ յայլ ։ Ոչ եթող մարդկան

[4] Կամ, Քաղցրասցի զնմանէ խորհուրդ [5] Եբր. զզօրութիւն նորա [6] Եբր. ազգ [7] Եբր. քեզ

մեղանչել նոցա, կշտամբեաց զթագա-
15 ւորս վասն նոցա. Մի՛ մերձենայք, ա-
սէ, յօծեալս իմ, եւ ի մարգարէս իմ մի՛
մեղանչէք։
16 Կոչեաց սով յերկիր նոցա, զամենայն
17 զօրութիւն հացի եբեկ։ Առաքեաց ա-
ռաջի նոցա այր, ի ծառայութիւն վա-
18 ճառեցաւ Յովսէփ։ Խոնարհ արարին ի
կապանս զոտս նորա, եւ անց ընդ եր-
19 կաթ անձն նորա։ Մինչեւ եկեսցէ բան
նորա, եւ բան Տեառն փորձեաց զնա։
20 Առաքեաց թագաւորն եւ եղոյծ զնա,
21 իշխան ժողովրդեան եթող զնա։ Կացոյց
զնա տէր տան իւրոյ, իշխան ի վերայ
22 ամենայն ստացուածոց իւրոց, Խրատել
զիշխանս նոցա որպէս զինքն, եւ զծերս
նոցա՝ իմաստունս արասցէ։
23 Եմուտ Իսրայէլ յԵգիպտոս, Յակոբ
24 պանդխտեցաւ յերկիր Քամայ։ Աճեցոյց
զժողովուրդ իւր յոյժ, եւ զօրացոյց զնոսա
25 քան զթշնամիս իւր։ Դարձոյց զսիրտ
նոցա՝ ատել զժողովուրդ իւր, եւ նենգե-
26 ղել ըծառայս իւր։ Առաքեաց զՄովսէս
ծառայ իւր, եւ զԱհարոն ընտրեալ իւր։
27 Եդ նոցա զբանս նշանաց իւրոց, եւ զա-
րուեստս իւր յերկիր Քամայ։
28 Առաքեաց խաւար եւ խաւարեցոյց
զնոսա, [1]զի դառնացուցին զբան նորա։
29 Դարձոյց յարիւն զջուրս նոցա, եւ սպան
30 զամենայն ձկունս նոցա։ Եռաց յերկիր
նոցա գորտ, ի շտեմարանս թագաւորաց
31 նոցա։ Ասաց՝ եւ եկն շանաճանճ եւ մժխս
32 ընդ ամենայն սահմանս նոցա։ Դարձոյց
զանձրեւս նոցա ի կարկուտ, եւ հուր
33 յերկիր նոցա բորբոքեցաւ։ Եհար զայգիս
եւ զթզենիս նոցա, եւ փշրեաց զամենայն
34 ծառս սահմանաց նոցա։ Ասաց՝ եւ եկն
մարախ եւ խառնիճ՝ զի ոչ գոյր նոցա թիւ։
35 Եկեր զամենայն խոտ երկրի նոցա, եւ
սպառեաց զամենայն պտուղ անդոյ նոցա։
36 Եհար զամենայն անդրանիկս Եգիպտաց-
ւոց, զսկիզբն ամենայն վաստակոց նոցա։
37 Եհան զնոսա ոսկւով եւ արծաթով, եւ
38 ոչ գոյր յազգի նոցա հիւանդ։ Ուրախ
եղեւ Եգիպտոս ընդ ելանել նոցա, զի
անկաւ ահ Տեառն ի վերայ նոցա։
39 Սփռեաց ամպ հովանի առնել նոցա
ի տուէ, եւ հրով լոյս տալ նոցա ի գի-
40 շերի։ Խնդրեցին եւ եկն լորամարգի,
41 եւ հացիւ երկնից լցոյց զնոսա։ Եհար
զվէմն եւ բղխեցին ջուրք, եւ գնացին
42 գետք ընդ անջրդիս։ Յիշեաց զբան իւր
սուրբ, որ ընդ Աբրահամու ծառայի իւ-
43 րում։ Եհան զժողովուրդ իւր ցնծու-
թեամբ, եւ զընտրեալս իւր ուրախու-
44 թեամբ։ Ետ նոցա զգաւառս հեթանո-
սաց, ի վաստակս ժողովրդոց ժառան-
45 գեցոյց զնոսա։ Զի պահեսցեն զիրաւու-
թիւնս նորա, եւ զօրէնս նորա խնդրես-
ցեն։[2]

## ՍԱՂՄՈՍ ՃԵ (ՃԶ)

1 Ալէլուիա։ Խոստովան եղերուք Տեառն
զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմու-
2 թիւն նորա։ Ո՞ խօսեսցի զզօրութիւն
Տեառն, լսելի արասցէ զամենայն օրհ-
3 նութիւնս նորա։ Երանի՜ որք պահեն
զիրաւունս, եւ առնեն զարդարութիւն
յամենայն ժամ։
4 Յիշեա [3]զմեզ, Տէր, ընդ հաճոյս ժո-
ղովրդեան քո, եւ այց արա [4]մեզ ի
5 փրկութեան քում։ Տեսցուք մեք զքաղց-
րութիւն ընտրելոց քոց, ուրախ եղիցուք
մեք յուրախութիւն ազգի քո, եւ գո-
վեսցուք մեք ի ժառանգութեան քում։
6 Մեղաք մեք ընդ հարսն մեր, անօրի-
7 նեցաք եւ յանցեաք։ Հարքն մեր յԵ-
գիպտոս ոչ իմացան զսքանչելիս քո, եւ
ոչ յիշեցին զբազում ողորմութիւնս քո.
բարկացուցին զքեզ յանցանելն իւրեանց
8 ընդ ծով Կարմիր. Փրկեաց զնոսա վասն
անուան իւրոյ, զի ծանիցեն զզօրու-
9 թիւնս նորա։ Սաստեաց ի ծով Կար-
միր՝ եւ ցամաքեցաւ. առաջնորդեաց
նոցա ընդ անդունդս որպէս ընդ անա-
10 պատ։ Կեցոյց զնոսա ի ձեռաց ատելեաց
նոցա, եւ փրկեաց զնոսա ի ձեռաց
11 թշնամեաց նոցա։ Ծածկեաց ծով զնեղիչս
նոցա, եւ մի ի նոցանէ ոչ ապրեցաւ։
12 Հաւատացին ի բան նորա, եւ օրհնեցին
զօրհնութիւն նորա։
13 Վաղվաղեցին եւ մոռացան զգործս
նորա, եւ ոչ անսացին խորհրդոց նորա։
14 Ցանկացան զցանկութիւն յանապատի,
15 եւ փորձեցին զԱստուած յանջրդի։ Ետ
նոցա զխնդրուածս նոցա, եւ առաքեաց
16 [5]լիութիւն յանձինս նոցա։ [6]Բարկացու-
ցին զՄովսէս ի բանակի, եւ զԱհարոն
17 սուրբ Տեառն։ Բացաւ երկիր եւ եկուլ
զԴաթան, եւ ծածկեաց զբանակն զԱբի-
18 րոնի։ Հուր վառեցաւ ի ժողովս նո-

[1] Եբր. եւ ոչ

[2] Եբր–յետին յաւելու, Ալէլուիա։ [3] Եբր. զիս [4] Եբր. ինձ [5] Եբր. զայրութիւն [6] Եբր. Նախանձեցան ընդ Մովսէս եւ ընդ Ահարոն

19 ցս, եւ բոց մաշեաց զմեղաւորս ։ Արարին
զուարթն ի Քորէբ, եւ երկիր պագին պատ-
20 կերի . Եւ փոխեցին զփառս իւրեանց ի
21 նմանութիւն որթու խոտակերի ։ Մոռա-
ցան զԱստուած կենարար իւրեանց,
որ արար զմեծամեծս իւր յԵգիպտոս,
22 Զսքանչելիս իւր յերկիր Քամայ, եւ զահ-
23 իւր ի վերայ Կարմիր ծովուն ։ Ասաց սա-
տակել զնոսա, եթէ ոչ Մովսէս ընտ-
րեալ կայր առաջի նորա . դարձաւ առ
Տէր եւ անցոյց զբարկութիւն նորա
24 զի մի՛ սատակեսցին նոքա ։ Անարգեցին
զերկիրն ցանկալի, եւ ոչ հաւատացին
25 բանի նորա ։ Տրտնջեցին ի բանակս իւ-
26 րեանց, եւ ոչ լուան ձայնի Տեառն ։ Համ-
բարձ զձեռն իւր ի վերայ նոցա, հար-
27 կանել զնոսա յանապատի ։ Ցրուեալ
զաւակ նոցա ընդ հեթանոսս, ցրուեալ
զաւակ նոցա ընդ գաւառս ։
28 Պղծեցան նոքա ի Բեեղփեգովր, կերան
29 [1]զզոհեալ եւ զմեռելոտի՛ ։ Բարկացուցին
զնա ի գործս իւրեանց, եւ յաճախեաց ի
30 վերայ նոցա բեկումն ։ Առաւ եկաց ի մէջ
Փենեհէս, քաւեաց եւ արգելաւ մահ.
31 Համարեցաւ նմա յարդարութիւն ազգէ
յազգ մինչեւ յաւիտեան ։
32 Բարկացուցին զնա ի Ջուրն Հակա-
ռակութեան, [2]չարչարեցաւ Մովսէս՛
33 վասն նոցա . Զի դառնացուցին զոգի
34 նորա, մինչեւ շրթամբք իւրովք ։ Եւ
ոչ սատակեցին զազգսն զոր ասաց նոցա
35 Տէր ։ Խառնակեցան ընդ հեթանոսս եւ
36 ուսան զգործս նոցա . Ծառայեցին կռոց
նոցա, եւ եղեւ նոցա ի գայթակղութիւն ։
37 Զոհեցին զուստերս եւ զդստերս իւրեանց
38 դիւաց, եւ հեղին զարիւն անմեղ, Զարիւն
ուստերաց եւ դստերաց իւրեանց, զոր
զոհեցին կռոցն Քանանու . շաղախեցաւ
39 երկիր յարենէ նոցա ։ Եւ [3]պղծեցաւ ի
գործոց նոցա, զի՛ պոռնկեցան ի գնացս
իւրեանց ։
40 Բարկացաւ սրտմտութեամբ Տէր ի վե-
րայ ժողովրդեան իւրոյ, եւ գարշեցոյց
41 զժառանգութիւն իւր յոյժ . Մատնեաց
զնոսա ի ձեռս հեթանոսաց, տիրեցին
42 նոցա ատելիք իւրեանց ։ Եւ թշնամիք
իւրեանց նեղեցին զնոսա, եւ խոնարհ
43 եղեն ի ներքոյ ձեռաց նոցա ։ Բազում
անգամ փրկեաց զնոսա, եւ նոքա դառ-
նացուցին զնա ի խորհուրդս իւրեանց,
եւ կորացան յանօրէնութեան իւրեանց ։
44 Հայեցաւ Տէր ի նեղութիւնս նոցա,
45 ի լսել ձայնի աղօթից նոցա ։ Յիշեաց
զուխտ իւր եւ զղջացաւ ըստ բազում
46 ողորմութեան իւրում . Ետ զնոսա ի
գթութիւնս առաջի ամենայն գերչաց
նոցա ։
47 Փրկեա զմեզ, Տէր Աստուած մեր,
եւ ժողովեա զմեզ ի հեթանոսաց . խոս-
տովան եղիցուք անուան քում սրբոյ,
եւ պարծեսցուք յօրհնութիւնս քո ։
48 Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի յա-
ւիտենից յաւիտեանս . եւ ասասցէ ամե-
նայն ժողովուրդն, Եղիցի, [4]եղիցի ։

## ՍԱՂՄՈՍ ՃԶ. (ՃԷ)

[5]Ալէլուիա ։

1 Խոստովան եղերուք Տեառն, զի քաղցր
է, զի յաւիտեան է ողորմութիւն նորա ։
2 Ասասցեն փրկեալք Տեառն, զորս փրկ-
3 եաց ի ձեռաց թշնամւոյն . Յամենայն
գաւառաց ժողովեաց զնոսա, յարեւելից
եւ յարեւմտից, ի հիւսիսոյ եւ ի ծովէ ։
4 Մոլորեցան նոքա յանապատի՛ յանջրդի
ճանապարհի, եւ քաղաք բնակութեան
5 ոչ գտին ։ Քաղցեան եւ ծարաւեցան,
եւ անձինք նոցա ի նոսին նուաղեցան ։
6 Աղաղակեցին առ Տէր ի նեղութեան
իւրեանց, ի վշտաց նոցա փրկեաց զնոսա
7 Առաջնորդեաց նոցա ի ճանապարհ ու-
ղիղ, զի երթիցեն ի քաղաք բնակու-
թեան իւրեանց ։
8 Խոստովան եղիցին Տեառն ողորմու-
թեանց նորա, սքանչելեաց նորա՛ յոր-
9 դիս մարդկան ։ Զի յագեցոյց զան-
ձինս քաղցեալս, եւ զանձինս կարօտ-
եալս լի արար բարութեամբ ։
10 Այլ նստէին ի խաւարի եւ ի ստուերս
մահու, կապեալ էին յաղքատութեան
11 արկէս յերկաթս ։ Զի դառնացուցին
զբանն Աստուծոյ, եւ զխորհուրդս Բարձ-
12 րելոյն [6]բարկացուցին ։ Խոնարհ եղեն ի
ցաւոց սիրտք նոցա, տկարացան եւ ոչ
13 ոք էր որ օգնէր նոցա ։ Աղաղակեցին
առ Տէր ի նեղութեան իւրեանց, ի վշ-
14 տաց նոցա եհան զնոսա ։ Փրկեաց զնոսա

[1] Եբր. զզոհեալս մեռելոտւոց [2] Եբր. չար եղեւ Մովսէսի [3] Եբր. պղծեցան ի գործս իւրեանց, եւ

[4] Եբր. Ալէլուիա [5] Յեբր. պակասէ [6] Եբր. արհամարհեցին

ի խաւարէ եւ ի ստուերաց մահու, եւ
խզեաց զկապանս նոցա։
15 Խոստովան եղիցին Տեառն ողորմու-
թեանց նորա, եւ զսքանչելեաց նորա՝
16 յորդիս մարդկան։ Զի փշրեաց զդրունս
պղնձիս, եւ զնիգս երկաթիս խորտակեաց։
17 [1]Օգնեաց նոցա ի ճանապարհի անօրէ-
նութեան իւրեանց, զի՝՝ վասն մեղաց
18 իւրեանց խոնարհ եղեն յոյժ։ Յամենայն
կերակրոց գարշէին սիրտք նոցա, մեր-
19 ձեցան մինչեւ ի դրունս մահու։ Աղա-
ղակեցին առ Տէր ի նեղութեան իւր-
եանց, ի վշտաց նոցա ապրեցոյց զնոսա։
20 Առաքեաց զբան իւր եւ բժշկեաց զնոսա,
եւ փրկեաց զնոսա յապականութենէ
21 իւրեանց։ Խոստովան եղիցին Տեառն
ողորմութեանց նորա, եւ սքանչելեաց նո-
22 րա՝ յորդիս մարդկան։ Մատուսցեն նմա
պատարագ օրհնութեան, եւ պատմես-
23 ցեն զգործս նորա ցնծութեամբ։ Որք
իջանէին ի ծով նաւովք, եւ առնէին
24 զգործս ի ջուրս բազումս։ Նոքա տեսին
զգործս Տեառն, եւ զսքանչելիս նորա
25 ի խորս անդնդոց։ Ասաց՝ եւ յարեաւ
հողմ եւ մրրիկ, եւ բարձրացան ալիք
26 նորա։ Ելանէին յերկինս եւ իջանէին
յանդունդս, եւ անձինք նոցա [2]յանձինս
27 իւրեանց՝՝ մաշեցան։ Խռովեցան տատա-
նեցան որպէս արբեալք, եւ ամենայն
28 իմաստութիւն նոցա ընկլաւ։ Աղաղա-
կեցին առ Տէր ի նեղութեան իւրեանց,
29 ի վշտաց նոցա կեցոյց զնոսա։ Դարձոյց
զմրրիկն [3]յօդս, եւ դադարեցին ալիք նո-
30 րա։ Ուրախ եղեն զի դադարեցին, եւ
առաջնորդեաց նոցա ի նաւահանգիստ
կամաց իւրեանց։
31 Խոստովան եղիցին Տեառն՝ զողորմու-
թեանց նորա, եւ զսքանչելեաց նորա՝
32 յորդիս մարդկան։ Բարձր արասցեն զնա
ի ժողովս ժողովրդոց, եւ յաթոռս ծերոց
օրհնեսցեն զնա։
33 Դարձոյց զգետս ի ցամաք, եւ զգնացս
34 ջուրց յերկիր ծարաւուտ։ Արար զեր-
կիրն պտղաբեր յաղտաղտուկս, վասն
35 չարութեան բնակչաց նորա։ Արար զա-
նապատն ի ճահիճս ջուրց, եւ զերկիրն
36 ծարաւուտ ի գնացս ջուրց։ Բնակեցոյց
ի նմա քաղցեալս, եւ շինեցին քաղաք
37 բնակութեան իւրեանց։ Վարեցին արտս
եւ տնկեցին այգիս, եւ արարին պտուղ
38 արմտեաց իւրեանց։ Օրհնեաց զնոսա եւ
բազմացան յոյժ, եւ անասունք նոցա ոչ
39 նուազեցան։ Նուազեցան նոքա եւ չար-
չարեցան, ի նեղութենէ չարեաց եւ ի
40 վշտաց։ Եկն անարգութիւն ի վերայ
իշխանաց նոցա, մոլորեցոյց զնոսա յա-
41 նապատի եւ ոչ ի ճանապարհի։ Օգնեաց
տնանկին յաղքատութեան, եւ առաջնոր-
42 դեաց որպէս խաշին տոհմի նոցա։ Տես-
ցեն ուղիղք եւ ուրախ եղիցին, եւ ա-
43 մենայն անօրէն խցցէ զբերան իւր։ Ո՞վ
է իմաստուն որ պահեսցէ զայս, եւ ի
միտ առցէ զողորմութիւնս Տեառն։

## ՍԱՂՄՈՍ ՃԷ (ՃԸ)

1 Օրհնութիւն Սաղմոսաց Դաւթի։
2 Պատրաստ է սիրտ իմ, Աստուած,
[4]պատրաստ է սիրտ իմ օրհնել եւ սաղ-
3 մոս ասել քեզ՝՝ փառօք իմովք։ Զար-
թիք, [5]փառք իմ, զարթիք սաղմոսիւք
եւ օրհնութեամբ, եւ՝՝ ես զարթեայց
4 առաւօտուց։ Խոստովան եղէց քեզ ի
ժողովուրդս, Տէր, եւ սաղմոս ասացից
5 քեզ յազգինս։ Մեծ եղեւ մինչեւ յերկինս
ողորմութիւն քո, մինչեւ յամպս ճշմար-
6 տութիւն քո։ Բարձրեալ ես դու յեր-
կինս, Աստուած, եւ յամենայն երկիր են
7 փառք քո։ Որպէս փրկեսցին սիրելիք քո,
կեցո աջով քով եւ լուր մեզ։
8 Աստուած խօսեցաւ ի սրբութենէ
իւրմէ, բարձր եղէց, բաժանեցայց
զՍիւքէմ եւ զհովիտն Ցարկաց չա-
9 փեցից. Իմ է Գաղաադ եւ իմ է
Մանասէ. Եփրեմ հզօրիչ գլխոյ իմոյ.
10 Յուդա [6]թագաւոր իմ. Մովաբ աւա-
զան [7]յուսոյ իմոյ. յԵդովմէ ուղղե-
ցից զգնացս իմ, եւ ինձ այլազգիք
հնազանդ եղեն։
11 Ո՞ տարցէ զիս ի քաղաք ամուր, կամ
ո՞ առաջնորդեսցէ ինձ մինչեւ յԵդովմէ։
12 Եթէ ոչ դու, Աստուած, որ մերժեցեր
զմեզ, եւ ոչ ելեր, Աստուած, ընդ զօրս
13 մեր։ Տուր մեզ օգնութիւն ի նեղու-
թեան, զի սուտ է փրկութիւն մարդոյ։
14 Աստուծով արասցուք զօրութիւն, եւ
նա յամօթ արասցէ զթշնամիս մեր։

---

[1] Եբր. Ցիմարք ի ճանապարհի անօրէնութեան իւրեանց. եւ [2] Եբր. ի չարիս [3] Եբր. ի հանդարտութիւն

[4] Եբր. օրհնեցից եւ սաղմոս ասացից [5] Եբր. տաւիղ եւ քնար. [6] Եբր. օրէնսդիր [7] Եբր. լուացման

## ՍԱՂՄՈՍ ՃԸ (ՃԹ)

1 [1]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։
2 Աստուած օրհնութեան իմոյ, մի՛ լռեր,
զի բերան մեղաւորի, բերան նենգաւորի
բացաւ ի վերայ իմ. խօսեցան զինէն
3 լեզուաւ նենգաւորաւ. Եւ բանիւք ատե-
լութեան պաշարեցին զիս. մարտեան ընդ
4 իս ի տարապարտուց։ Փոխանակ սիրոյ
իմոյ մատնէին զիս, այլ ես յաղօթս կայի։
5 Հատուցին ինձ չար փոխանակ բարւոյ,
ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ։
6 Կացո ի վերայ նորա մեղաւոր, Սա-
7 տանայ կացցէ ընդ աջմէ նորա։ Ի դա-
տաստանէ իւրմէ ելցէ դատապարտեալ,
8 եւ աղօթք նորա ի մեղս դարձցին։ Եղի-
ցին աւուրք նորա նուազ, եւ զայցե-
9 լութիւն նորա՝ զայն այլ առցէ։ Եղի-
ցին որդիք նորա որբ եւ կին նորա այրի.
10 Սահեսցին փոփոխեսցին, որդիք նորա
մուրօզք եղիցին, եւ ելցեն ի բնակու-
11 թենէ իւրեանց։ [2]Քննեսցէ փոխատու
զամենայն ինչս նորա, յափշտակեսցեն
12 օտարք զվաստակս նորա։ Մի՛ գտցի ոք
օգնական նմա, եւ մի՛ ոք ողորմեսցի ի
13 վերայ որբոց նորա։ Եղիցին որդիք նո-
րա ի սատակումն, եւ յազգէ ջնջեսցի
14 անուն նորա։ Յիշեսցին մեղք հօր նորա
առաջի Տեառն, եւ մեղք մօր նորա մի՛
15 ջնջեսցին. Եւ եղիցին առաջի Տեառն
յամենայն ժամ. սատակեսցի յերկրէ յի-
16 շատակ նոցա. Փոխանակ զի ոչ յիշեաց
առնել զողորմութիւն. հալածեաց զայր
աղքատ եւ զտնանկ, սպանանել զայն
17 որ խոնարհն է սրտիւ։ Սիրեաց զանէծս՝
եւ եկեսցէ նմա. ոչ կամեցաւ զօրհնու-
18 թիւն, հեռի եղիցի ի նմանէ։ Զգեցաւ
զանէծս որպէս հանդերձ, մտցէ որպէս
ջուր ի փոր նորա, որպէս ձէթ ընդ
19 ոսկերս նորա։ Եղիցի նմա որպէս հան-
դերձ զի ագանի, որպէս գօտի որ ածի
20 հանապազ ընդ մէջ։ Այս գործ է այնո-
ցիկ որ չարախօս կային զինէն առ Տէր,
եւ որք խօսէին չար զանձնէ իմմէ։
21 Այլ դու, Տէր, Տէր, արա ընդ իս ըստ ա-
նուան քում, զի քաղցր է ողորմութիւն
22 քո, եւ փրկեա զիս։ Զի աղքատ եւ տնանկ
եմ ես. սիրտ իմ խռովեցաւ ի փորի ի-
23 մում. Եւ ես որպէս ստուեր ի խոնար-
հել [3]իմում պակասեցայ, եւ թօթափե-

[1] Եբր. Առ գլուխ երաժշտացն [2] Եբր. Գրաւեսցէ
[3] Եբր. գոլովէ

24 ցայ որպէս մարախ։ Ծունկք իմ տկա-
րացան ի պահոց, եւ մարմին իմ [4]այլա-
25 յունեաց յիւղոյ՝։ Եղէ ես նախատ նո-
ցա, տեսին զիս եւ շարժեցին զգլուխս
26 իւրեանց։ Օգնեա ինձ, Տէր Աստուած
իմ, եւ փրկեա զիս ըստ ողորմութեան
27 քում։ Ծանիցեն զի ձեռն քո այս է,
28 եւ դու, Տէր, արարեր զայս։ Նոքա
անիծանեն եւ դու օրհնեսցես. որք յա-
րուցեալ են ի վերայ իմ՝ ամօթ կրեսցեն,
այլ ծառայ քո ուրախ եղիցի [3]ի քեզ։
29 Զգեցցին զամօթ որ չարախօս կային
զանձնէ իմմէ, եւ արկցեն որպէս կրկ-
30 նոց զամօթ իւրեանց զիւրեամբք։ Այլ
ես խոստովան եղէց առ Տէր յոյժ բե-
րանով իմով, ի մէջ բազմաց օրհնեցից
31 զքեզ։ Զի եկաց նա ընդ աջմէ տնան-
կին, փրկել զիս յայնցանէ որք հալա-
ծեն զանձն իմ։

## ՍԱՂՄՈՍ ՃԹ (ՃԺ)

[3]Ի կատարած. Սաղմոս Դաւթի։

1 Ասաց Տէր ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ
իմմէ, մինչեւ եդից զթշնամիս քո պա-
2 տուանդան ոտից քոց։ Գաւազան զօ-
րութեան առաքեսցէ քեզ Տէր ի Սիոնէ,
եւ տիրեսցես դու ի մէջ թշնամեաց քոց։
3 [5]Ընդ քեզ է սկիզբն աւուրց զօրութեան,
ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ
յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ՝։
4 Երդուաւ Տէր եւ ոչ եւս զղջասցի, թէ
Դու ես քահանայ յաւիտեան ըստ կար-
5 գին Մելքիսեդեկի։ Եւ Տէր ընդ աջմէ
քումմէ, խորտակեսցէ յաւուր [6]բար-
6 կութեան զթագաւորս։ Դատի զհեթա-
նոսս եւ բազում առնէ զհարուածս, եւ
խորտակեսցէ զգլուխս բազմաց յերկրի։
7 Զուխս ի ճանապարհի [7]արբուսցէ, վասն
այնորիկ եւ բարձր արասցէ զգլուխս։

## ՍԱՂՄՈՍ ՃԺ (ՃԺԱ)

Ալէլուիա։

1 Խոստովան եղէց քեզ, Տէր, բոլորով
սրտիւ իմով ի խորհուրդս ուղղոց, ի
2 ժողովուրդս։ Մեծ են գործք Տեառն,
եւ քննեալ են [8]յամենայնի կամք նորա։
3 Խոստովանութիւն՝ եւ վայելչութիւն

[4] Եբր. հաշեցաւ ի պարարտութենէ [5] Եբր. ժո-
ղովուրդ քո նուիրեալ յաւուր զօրութեանս քո,
ի վայելչութիւն սրբութեան. յարգանդէ յայգ-
ուէ քեզ ցօղ երիտասարդութեան քո։ [6] Եբր.
բարկութիւն իւրոյ [7] Եբր. արբցէ [8] Եբր.
յամենեցունց որ հաճին ընդ այնոսիկ։(3) Փառք

են գործք նորա, արդարութիւն նորա
4 մնայ յաւիտեանս յաւիտենից։ Յիշա-
տակ արար սքանչելեաց իւրոց [1]ուղղոց.
5 ողորմած գթած է Տէր։ Կերակուր ետ
երկիւղածաց իւրոց. յիշեաց յաւիտենից
6 զուխտ իւր։ Զզօրութիւն գործոց իւրոց
պատմեաց ժողովրդեան իւրում, տալ
7 նոցա զժառանգութիւն հեթանոսաց. Եւ
գործք ձեռաց նորա արդարութիւն եւ
իրաւունք են. հաւատարիմ են յա-
8 մենայնի պատուիրանք նորա, Հաստա-
տեալ են յաւիտեանս յաւիտենից, ա-
րարեալ են ճշմարտութեամբ եւ ուղղու-
9 թեամբ։ Փրկութիւն առաքեաց Տէր ժո-
ղովրդեան իւրում, պատուիրեաց յա-
ւիտենից զուխտ իւր. սուրբ եւ ահեղ
10 է անուն նորա։ Սկիզբն իմաստութեան
երկիւղ Տեառն, իմաստութիւն բարի
ամենեցուն որ առնեն զնա, եւ օրհնու-
թիւն նորա մնայ յաւիտեանս յաւիտենից։

## ՍԱՂՄՈՍ ՃԺԱ (ՃԺԲ)

Ալէլուիա։

1 Երանեալ է այր որ երկնչի ի Տեառնէ,
2 զպատուիրանս նորա նա կամի յոյժ։ Հզօր
եղիցի յերկրի զաւակ նորա, եւ ազգ
3 ուղղոց օրհնեսցի։ Փառք եւ մեծութիւն
են ի տան նորա, արդարութիւն նորա
4 մնայ յաւիտեանս յաւիտենից։ Ծագեաց
ի խաւարի լոյս ուղղոց, ողորմած գթած
5 եւ արդար է Տէր։ Բարւոք այր ողորմի
եւ տայ փոխ, յօրինէ զբան իւր ի դա-
6 տաստանի. Զի յաւիտեան նա մի՛ սա-
սանեսցի, յիշատակ յաւիտենից եղիցի
7 արդարն. Ի համբաւէ չարէ նա մի՛ երկի-
ցէ. պատրաստ է սիրտ նորա յուսալ առ
8 [2]Աստուած։ Հաստատեալ է սիրտ նորա
եւ նա մի՛ երկիցէ, մինչեւ տեսցէ ի
9 թշնամիս իւր։ Սփռեաց եւ ետ աղքա-
տաց. արդարութիւն նորա մնայ յաւի-
տեանս յաւիտենից, եւ եղջեւր նորա
10 բարձր եղիցի փառօք։ Մեղաւորն տես-
ցէ եւ բարկասցի, զատամունս իւր
կրճտեսցէ եւ հալեսցի, եւ ցանկութիւն
մեղաւորաց կորիցէ։

## ՍԱՂՄՈՍ ՃԺԲ (ՃԺԳ)

Ալէլուիա։

1 Օրհնեցէք, [3]մանկունք, զՏէր, եւ՛ օրհ-
2 նեցէք զանուն Տեառն։ Եղիցի անուն
Տեառն օրհնեալ, յայսմ հետէ մինչեւ
3 յաւիտեան։ Յարեւելից մինչեւ ի մուտս
4 արեւու օրհնեալ է անուն Տեառն։ Բարձր
է ի վերայ ամենայն ազգաց Տէր, եւ
5 [4]յերկինս են փառք նորա։ Ո՞վ է որպէս
Տէր Աստուած մեր, ի բարձունս բնա-
6 կեալ, [5]Եւ զխոնարհս տեսանէ՛ յերկինս
7 եւ յերկրի։ Յարուցանէ զաղքատ յերկ-
րէ, եւ բարձր առնէ զտառապեալս յաղ-
8 բեւաց։ Նստուցանէ զնոսա իշխանս ընդ
9 իշխանս ժողովրդեան իւրոյ։ Բնակե-
ցուցանէ զամուլն ի տան ուրախամիտ,
որպէս մայր որդւովք բերկրեալ։[6]

## ՍԱՂՄՈՍ ՃԺԳ (ՃԺԴ)

[1]Ալէլուիա։

1 Յելանելն Իսրայէլի յԵգիպտոսէ, տանն
Յակոբայ ի ժողովրդենէ այլազգեաց,
2 Եղեւ Հրէաստան սրբութիւն նորա, եւ
3 Իսրայէլ իշխանութիւն նորա։ Ծով ե-
տես եւ փախեաւ, եւ Յորդանան անդ-
4 րէն դարձաւ։ Լերինք ցնծացին որպէս
խոյք, եւ բլուրք որպէս գառինք մաքեաց։
5 Զի՞ է քեզ, ծով, [7]զի՞ տեսեր եւ՛
փախեար, կամ դու Յորդանան՝ զի դար-
6 ձար անդրէն. Լերինք, ցնծայէք որպէս
խոյք, եւ բլուրք՝ որպէս գառինք մաք-
7 եաց։ Յերեսաց Տեառն սասանեցաւ եր-
8 կիր, յերեսաց Աստուծոյ Յակոբայ։ Ո
դարձոյց զվէմն ի վտակս ջուրց, եւ
զապառաժն յաղբերակունս։

## (ՃԺԵ)

1 Մի՛ մեզ, Տէր, մի՛ մեզ, այլ անուան
քում տուր զփառս վասն ողորմութեան
2 եւ ճշմարտութեան քո։ Մի՛ երբեք ա-
սասցեն ի հեթանոսս, թէ Ո՞ւր է Աստուած
3 նոցա։ Աստուած մեր յերկինս [1]եւ յերկ-
րի՛. զամենայն զոր ինչ կամեցաւ եւ
արար։
4 Կուռք հեթանոսաց ոսկի եւ արծաթ են,
5 ձեռագործ են որդւոց մարդկան։ Բե-
րան ունին՝ եւ ոչ խօսին, աչս ունին՝
6 եւ ոչ տեսանեն, Ականջս ունին՝ եւ ոչ
լսեն, ունչս ունին՝ եւ ոչ հոտոտեն,
7 Ձեռս ունին՝ եւ ոչ շօշափեն, ոտս ու-
նին՝ եւ ոչ գնան. եւ ոչ գոյ բարբառ
8 ի կոկորդս նոցա։ Նման նոցա եղիցին
ոյք արարին զնոսա, ամենեքեան ոյք
յուսացեալ են ի նոսա։

---

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. Տէր [3] Եբր. ծառայք Տեառն,

[4] Եբր. ի վեր քան զերկինս [5] Եբր. Որ խոնարհի տեսանել որ ինչ [6] Եբրայեցին յաւելու, Ալէլուիա։ [7] Եբր. զի

9 [1]Տուն Իսրայէլի յուսացաւ ի Տէր, օգ-
10 նական ընդունելի է նոցա ։ Տուն Ահարո-
նի յուսացաւ ի Տէր, օգնական ընկալելի
11 է՛՛ նոցա ։ Երկիւղածք Տեառն յուսացան
ի Տէր . օգնական եւ փրկիչ է նոցա ։
12 Յիշեաց զմեզ Տէր եւ օրհնեաց զմեզ .
օրհնեաց Տէր զտունն Իսրայէլի. օրհնեաց
13 Տէր զտունն Ահարոնի ։ Օրհնեաց Տէր
զերկիւղածս իւր, զփոքրկունս եւ զմե-
14 ծամեծս ։ Յաւելցէ ի ձեզ Տէր, ի ձեզ
15 եւ յորդիս ձեր ։ Օրհնեալ էք դուք ի
Տեառնէ, որ արար զերկինս եւ զերկիր ։
16 Երկինք երկնից Տեառն են, եւ զեր-
17 կիր ետ որդւոց մարդկան ։ Ոչ թէ մեռ-
եալք օրհնեսցեն զքեզ, Տէր, եւ ոչ ամե-
18 նեքեան որ իջանեն ի դժոխս ։ Այլ կեն-
դանիքս օրհնեսցուք զՏէր, յայսմ հետէ
մինչեւ յաւիտեան ։[2]

## ՍԱՂՄՈՍ ՃԺԴ (ՃԺԶ)

[3]Ալէլուիա ։

1 Սիրեցի զի լուիցէ Տէր զձայն աղօթից
2 իմոց . Զի խոնարհեցոյց զունկն իւր առ
իս, եւ ես յաւուրս իմ կարդացի առ նա ։
3 Շրջեցան զինեւ երկունք մահու, եւ
վիշտք դժոխոց գտին զիս . զնեղութիւն
4 եւ զանձկութիւն գտի . Եւ զանուն
Տեառն կարդացի. ո՛ Տէր, փրկեա զանձն
5 իմ . Ողորմած եւ արդար է Տէր Ա-
6 տուած մեր . Ողորմի եւ պահէ [4]զտղայս
Տէր, ես խոնարհ եղէ եւ Տէր կեցոյց
7 զիս ։ Դարձ, անձն իմ, ի հանգիստ քո, զի
8 Տէր օգնեաց քեզ ։ Փրկեաց զանձն իմ
ի մահուանէ, զաչս իմ յարտասուաց,
9 եւ զոտս իմ ի գայթակղութենէ ։ [5]Հաճոյ
եղէց՛՛ առաջի Տեառն յերկրին կենդանեաց ։

## [3]ՍԱՂՄՈՍ ՃԺԵ

Ալէլուիա ։՛՛

10 Հաւատացի զոր եւ խօսեցայ, եւ ես
11 խոնարհ եղէ յոյժ ։ Ես ասացի ի զար-
մանալ իմում, թէ Ամենայն մարդ սուտ է ։
12 Զի՞նչ տաց տրիտուր Տեառն, ընդ
13 ամենայնի զոր ետ ինձ ։ Բաժակ
փրկութեան ընկալայց, եւ զանուն
14 Տեառն կարդացից ։ Զաղօթս իմ Տեառն
տաց առաջի ամենայն ժողովրդեան նո-
15 րա ։ Պատուական է առաջի Տեառն մահ
16 սրբոց իւրոց ։ Ո՛ Տէր, ես ծառայ քո
եմ, ծառայ եւ որդի աղախնոյ քո . հա-
17 տեր զկապանս իմ ։ Քեզ մատուցից պա-
տարագ օրհնութեան, եւ զանուն Տեառն
18 կարդացից ։ Զաղօթս իմ Տեառն տաց
առաջի ամենայն ժողովրդեան նորա,
19 ի գաւիթս տան Տեառն, եւ ի մէջ քո,
Երուսաղէմ ։[2]

## ՍԱՂՄՈՍ ՃԺԶ (ՃԺԷ)

[3]Ալէլուիա ։

1 Օրհնեցէք զՏէր ամենայն ազինք, գովե-
2 ցէք զնա ամենայն ժողովուրդք ։ Զօրացի
ողորմութիւն նորա ի վերայ մեր, եւ ճըշ-
մարտութիւն Տեառն մնասցէ յաւիտեան ։[2]

## ՍԱՂՄՈՍ ՃԺԷ (ՃԺԸ)

[3]Ալէլուիա ։

1 Խոստովան եղերուք Տեառն, զի քաղցր
է . զի յաւիտեան է ողորմութիւն նորա ։
2 Ասասցէ տունն Իսրայէլի՝ [3]զի քաղցր է,՛՛
զի յաւիտեան է ողորմութիւն նորա ։
3 Ասասցէ տունն Ահարոնի՝ [3]զի քաղցր է,՛՛
զի յաւիտեան է ողորմութիւն նորա ։
4 Ասասցեն երկիւղածք Տեառն՝ [3]զի քաղցր
է,՛՛ զի յաւիտեան է ողորմութիւն նորա ։
5 Ի նեղութեան իմում ես առ Տէր կար-
6 դացի, եւ լուաւ ինձ յանդորր ։ Տէր է
իմ օգնական եւ ես ոչ երկեայց . զի՞
7 արասցէ ինձ մարդ ։ Տէր է իմ օգնական,
8 եւ ես տեսից ի թշնամիս իմ ։ Բարի է
9 յուսալ ի Տէր քան յուսալ ի մարդիկ ։ Բարի
10 է յուսալ ի Տէր քան յուսալ յիշխանս ։ Ա-
մենայն ազինք շրջեցան զինեւ, եւ ա-
11 նուամբ Տեառն յաղթեցի նոցա ։ Շրջե-
լով շրջեցան զինեւ, եւ պաշարեցին զիս
ի միասին, եւ անուամբ Տեառն վանեցի
12 զնոսա ։ Շուրջ եղեն զինեւ որպէս մե-
ղուք, վառեցան բորբոքեցան որպէս
փուշք ի հուր, եւ անուամբ Տեառն
13 մերժեցի զնոսա ։ Ի մերժելն դրդուեցայ
եւ եղէ մերձ ի գլորել, եւ Տէր ընկա-
14 լաւ զիս ։ Զօրութիւն իմ եւ օգնու-
թիւն իմ Տէր, եւ եղեւ ինձ ի փրկու-
15 թիւն ։ Ձայն ցնծութեան եւ փրկութեան
ի յարկս արդարոց . աջ Տեառն արար զօ-
16 րութիւն . Աջ Տեառն բարձր [6]արար զիս,
17 եւ՛՛ աջ Տեառն արար զօրութիւն ։ Ոչ
մեռայց, այլ կեցից եւ պատմեցից զգործս
18 Տեառն ։ Խրատելով խրատեաց զիս Տէր,
եւ ի մահ ոչ մատնեաց ։

[1]Եբր. Իսրայէլ, յուսա ի Տէր. նա է օգնութիւն եւ ասպար նոցա ։ (10) Տուն Ահարոնի, յուսացարուք ի Տէր. նա է օգնութիւն եւ ասպար
[2]Եբրայեցին յաւելու, Ալէլուիա ։ [3]Եբր. պակասէ
[4]Եբր. զմիամիտս [5]Եբր. Ես գնացից
[6]Եբր. է,

19 Բացէք ինձ զդրունս արդարութեան՝
զի մտից ընդ այն, եւ խոստովան ե-
20 ղէց Տեառն։ Այս դուռն Տեառն է, եւ
21 արդարք մտանեն ընդ սա։ Խոստովան
եղէց քեզ, Տէր, զի լուար ինձ, եւ ե-
22 ղեր ինձ ի փրկութիւն։ Վէմն զոր ա-
նարգեցին շինողքն, նա եղեւ գլուխ
23 անկեան։ Ի Տեառնէ եղեւ այս, եւ է
24 սքանչելի առաջի աչաց մերոց։ Այսօր է
զոր արար Տէր, եկայք ցնծասցուք եւ
25 ուրախ եղիցուք ի սմա։ Ո՛ Տէր, փրկեա,
ո՛ Տէր, առաջնորդեա։
26 Օրհնեալ որ գալոցդ ես յանուն Տեառն,
27 եւ օրհնեցաք [1]զքեզ ի տանէ Տեառն։ [2]Տէր
Աստուած մեր երեւեցաւ մեզ, արարէք
տօնս ուրախութեան կանխաւ՝ մինչեւ
28 յանկիւնս՟ սեղանոյ։ Աստուած իմ ես
դու, եւ խոստովան եղէց քեզ. Աստուած
իմ ես, դու եւ բարձր արարից զքեզ։
[3]Խոստովան եղէց քեզ, Տէր, զի լուար
29 ինձ, եւ եղեր ինձ ի փրկութիւն՟։ Խոս-
տովան եղերուք Տեառն, զի քաղցր է,
զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

## ՍԱՂՄՈՍ ՃԺԸ (ՃԺԹ)

[3]Ալէլուիա։

1 Երանեալ են անբիծք ի ճանապարհի,
2 [3]եւ որք գնան յօրէնս Տեառն։ Երանի որք
[4]քննեն զվկայութիւնս նորա, բոլորով
3 սրտիւ խնդրեսցեն զնա։ [5]Ոչ
թէ որ՟ գործեն զանօրէնութիւն, ի ճա-
4 նապարհս նորա գնացին։ Դու պա-
տուիրեցեր զպատուիրանս քո, ի պահել
5 ինձ յոյժ։ Ո՜չ թէ յաջողեալ էին ինձ ճա-
նապարհք իմ, պահել ինձ զարդարու-
6 թիւնս քո։ Յայնժամ ես ոչ ամաչէի ի
7 զգուշանալ ինձ ի պատուիրանս քո։ Խոս-
տովան եղէց քեզ, Տէր, յուղղութիւն
սրտի իմոյ, որպէս ուսայց զիրաւունս
8 արդարութեան քո։ Զիրաւունս քո պա-
հեցի, մի՛ թողուր զիս մինչեւ ի սպառ։

9 Ի՞ւ ուղղեսցէ երիտասարդ զճանապարհս
10 իւր, այլ ի պահել զբանս քո։ Բոլորով
սրտիւ իմով խնդրեցի զքեզ, մի՛ մերժեր
11 զիս ի պատուիրանաց քոց։ Ի սրտի իմում
թաքուցի զբանս քո, որպէս զի մի՛ մեղայց
12 քեզ։ Օրհնեալ ես դու, Տէր, ուսո ինձ զար-
13 դարութիւնս քո։ Շրթամբք իմովք պատ-
մեցից զամենայն իրաւունս բերանոյ քո։
14 Ի ճանապարհս վկայութեանց քոց զուար-
ճացայ, որպէս յամենայն ի մեծութեան։
15 Ի պատուիրանս քո հոգացայց, եւ զգուշա-
16 ցայ ի ճանապարհս քո։ [6]Զիրաւունս քո
խօսեցայ, եւ ոչ մոռացայ՟ զբանս քո։

17 Հատո ծառայի քում, զի կեցից եւ պա-
18 հեցից զբանս քո։ Զարթո զաչս իմ, եւ
նայեցայց ի սքանչելիս օրինաց քոց։
19 Պանդուխտ եմ ես յերկրի, մի՛ թաքու-
20 ցաներ յինէն զպատուիրանս քո։ [7]Փա-
փաքեաց անձն իմ ի ցանկալ ինձ յի-
21 րաւունս քո յամենայն ժամ։ Սաստեցեր
ամբարտաւանից, անիծեալ որք խոտորե-
22 ցան ի պատուիրանաց քոց։ Ի բաց արա
յինէն զնախատինս եւ զարհամարհանս,
23 զի զվկայութիւնս քո խնդրեցի։ Քանզի
նստան իշխանք եւ չարախօսէին զինէն,
այլ ծառայ քո խորհէր յիրաւունս քո։
24 Զի վկայութիւնք քո [8]խօսք իմ էին,
եւ խորհուրդք իմ արդարութիւն քո՟։

25 Մերձեցաւ անձն իմ ի հող. Տէր, կեցո
26 զիս ըստ բանի քում։ Զճանապարհս իմ
պատմեցի քեզ եւ լուար ինձ, ուսո ինձ
27 զարդարութիւնս քո։ Ի ճանապարհս [9]ար-
դարութեանց քոց իմաստուն արա զիս,
28 եւ քննեցից զսքանչելիս քո։ Տքնեցաւ
անձն իմ առ ի ձանձրանալ, հաստատեա
29 զիս ի բանս քո։ Զճանապարհս [10]մեղաց
ի բաց արա յինէն, եւ յօրէնս քո ողոր-
30 մեա՟ ինձ։ Զճանապարհս ճշմարտու-
թեան քո ընտրեցի, եւ զիրաւունս քո
31 ես ոչ մոռացայ։ Մերձեցայ ես ի վկայու-
թիւնս քո, Տէր, մի՛ յամօթ առներ զիս։
32 Ի ճանապարհս պատուիրանաց քոց ըն-
թացայ, զի անդորր արարեր սրտի իմոյ։

33 Օրէնսդէտ արա զիս, Տէր, ի ճանապարհս
իրաւանց քոց, եւ խնդրեցից զնա յամե-
34 նայն ժամ։ Իմաստուն արա զիս, եւ
[11]քննեցից զօրէնս քո՟, եւ պահեցից զնա
35 բոլորով սրտիւ իմով։ Առաջնորդեա ինձ
ի շաւիղս պատուիրանաց քոց, զի ընդ
36 նոսա հաճեցայ։ Խոնարհեցո զսիրտ իմ ի

---

[1] Եբր. զձեզ [2] Եբր. Աստուած է Տէր մեր, և լոյս տայ մեզ. կապեցէք զզոհն կարօվք մինչեւ յեղջեւրս [3] [illegible] [4] Եբր. պահեն [5] Եբր. Նա եւ ոչ

[6] Եբր. Յիրաւունս քո զուարճացայց. և ոչ մոռացայց [7] Եբր. Նուաղեցաւ [8] Եբր. բերկրութիւն իմ էին, որք խորհրդող իմոց [9] Եբր. պատուիրանաց [10] Եբր. ստութեան ի բաց արա յինէն, և զօրէնս քո պարգեւեա [11] Եբր. զգուշացայց օրինաց քոց

վկայութիւնս քո, եւ մի՛ յագահութիւն։
37 Դարձո զաչս իմ, զի մի՛ տեսից զնանրու-
38 թիւն, ի ճանապարհս քո կեցո զիս։ Հաս-
տատեա ծառայի քում զբան քո՝ յեր-
39 կիւղ քո։ Հան յինէն զնախատինս [1]զոր ես
կարծեցի՝, զի դատաստանք քո քաղցր
40 են։ Ահա ցանկացայ պատուիրանաց քոց,
յարդարութեան քում կեցո զիս։

41 Եկեսցէ ի վերայ իմ ողորմութիւն քո,
Տէր, եւ փրկութիւն քո ըստ բանի քում։
42 Տաց պատասխանի որք նախատեն զիս
բանիւք, զի ես ի բանս քո յուսացայ։
43 Մի՛ ի բացեայ առներ ի բերանոյ իմմէ զբան
ճշմարտութեան մինչեւ յոյժ, զի ի իրա-
44 ւունս քո յուսացայ։ Պահեցից զօրէնս քո
յամենայն ժամ, յաւիտեան եւ յաւի-
45 տեանս յաւիտենից։ Գնայի ես յանդոր-
րու, զի զպատուիրանս քո խնդրեցի։
46 Խօսէի զվկայութիւնս քո առաջի թա-
47 գաւորաց, եւ ոչ ամաչէի։ [2]Խորհէի ի
48 պատուիրանս քո զոր սիրեցի։ Ամբարձի
զձեռս իմ ի պատուիրանս քո՝ զոր սիրե-
ցի, եւ խորհէի յարդարութեան քում։

49 Յիշեա զբան ծառայի քո, յոր եւ յուսա-
50 ցուցեր զիս։ Սա մխիթարեաց զիս ի
խոնարհութեան իմում, զի բան քո կե-
51 ցոյց զիս։ Ամբարտաւանք անիրաւեցան
յիս յոյժ, այլ յօրինաց քոց ես ոչ խոտո-
52 րեցայ։ Յիշեցի զիրաւունս քո յաւիտե-
53 նից, Տէր, եւ մխիթարեցայ։ Տրտմութիւն
կալաւ զիս ի մեղաւորաց, որք թողին
54 զօրէնս քո։ [3]Գովելի են ինձ իրաւունք՝ քո,
55 ի տեղւոջ պանդխտութեան իմոյ։ Յիշեցի
ի գիշերի զանուն քո, Տէր, եւ պահեցի
56 զօրէնս քո։ Սա եղեւ [4]ինձ ճանապարհ ի
կեանս, զի զարդարութիւնս՝ քո խնդրեցի։

57 Բաժին իմ ես դու, Տէր, ասացի պահել
58 ինձ զօրէնս քո։ Աղաչեցի զերեսս քո
բոլորով սրտիւ իմով, ողորմեա ինձ ըստ
59 բանի քում։ Խորհեցայ ի ճանապարհս իմ,
եւ դարձուցի զոտս իմ ի վկայութիւնս
60 քո։ [5]Պատրաստեցայ եւ ոչ խռովեցայ՝, զի
61 պահեցի զպատուիրանս քո։ Տոռունք [6]մե-
ղաց պատեցան զինեւ, այլ զօրէնս քո ես
62 ոչ մոռացայ։ Ի մէջ գիշերի յառնէի խոստո-
վան լինել առ քեզ, վասն իրաւանց ար-
63 դարութեան քո։ Հաղորդ էի ես ամենայն
երկիւղածաց քոց, որոց պահեալ է զպա-
64 տուիրանս քո։ Ողորմութեամբ Տեառն լի
եղեւ երկիր, զարդարութիւնս քո ուսո ինձ։

65 Քաղցրութիւն արարեր ընդ ծառայի
66 քում, Տէր, ըստ բանի քում։ Զքաղցրու-
թիւն, զխրատ եւ զգիտութիւն ուսո ինձ,
զի ի պատուիրանս քո ես հաւատացի։
67 Մինչչեւ խոնարհեալ էի ես մեղայ, վասն
այսորիկ զբանս քո պահեցի յոյժ։
68 Քաղցր ես դու, Տէր, եւ քաղցրութեամբ
69 քով ուսո ինձ զարդարութիւնս քո։ Բազ-
մացան յիս անիրաւութիւնք ամբարտա-
ւանից, այլ ես բոլորով սրտիւ իմով
70 [7]քննեցի զպատուիրանս քո։ Մածաւ որ-
պէս [8]կաթն սիրտ նոցա, այլ ես [9]զօրէնս
71 քո խօսեցայ՝։ Բարի է ինձ՝ զի խոնարհ
արարեր զիս, որպէս ուսայց զարդարու-
72 թիւնս քո։ Բարի են ինձ օրէնք բերանոյ
քո, քան զհազարս ոսկւոյ եւ արծաթոյ։

73 Ձեռք քո արարին եւ ստեղծին զիս, ի-
մաստուն արա զիս եւ ուսայց զպատուի-
74 րանս քո։ Երկիւղածք քո տեսցեն զիս եւ
ուրախ եղիցին, զի ես ի բանս քո յուսա-
75 ցայ։ Ծանեայ, Տէր, զի արդարութեամբ
են դատաստանք քո. յիրաւի խոնարհե-
76 ցուցեր զիս։ Եղիցի ողորմութիւն քո ի
մխիթարել զիս ըստ բանի քում [10]ծա-
77 ռայս քո։ Եկեսցեն յիս գթութիւնք քո եւ
78 կեցից, զի օրէնք քո [11]խօսք իմ էին։ Ամա-
չեսցեն ամբարտաւանք որ ի տարապար-
տուց անիրաւեցան յիս, այլ ես հողացայց
79 ի պատուիրանս քո։ [12]Խրատեսցեն զիս՝
երկիւղածք քո, եւ որք ճանաչեն զվկայու-
80 թիւնս քո։ Եղիցի սիրտ իմ անբիծ յար-
դարութեան քում, զի մի՛ ամաչեցից։

81 Կարօտացաւ անձն իմ ի փրկութիւնս
82 քո, զի ես ի բանս քո յուսացայ։ [13]Սպա-
սեցին աչք իմ բանի քում, ասացի՝ Ե՞րբ
83 մխիթարեսցես զիս։ Եղէ ես որպէս տիկ
[14]ի պարդի, զի զարդարութիւնս քո ես ոչ
84 մոռացայ։ Քանի՞ ինչ են աւուրք ծառայի
քո, ե՞րբ արասցես ինձ իրաւունս ի հա-
85 լածչաց իմոց։ [15]Պատմեցին ինձ անօրէնք
զխորհուրդս, այլ ոչ որպէս զօրէնս քո՝։
86 Ամենայն պատուիրանք քո ճշմարիտ են,

[1] Եբր. յորմէ երկնչիմ [2] Եբր. Բերկրէի [3] Եբր. Երգ եղեն ինձ կանոնք [4] Եբր. ինձ. զի զպատուիրանս [5] Եբր. Փութացայ եւ ոչ յամեցի [6] Եբր. մեղաւորաց

[7] Եբր. պահեցից [8] Եբր. ճարպ [9] Եբր. զուարճացայ յօրէնս քո [10] Եբր. առ ծառայ [11] Եբր. բերկրութիւն [12] Եբր. Դարձցին առ իս [13] Եբր. Նուաղեցան [14] Եբր. ի ծուխ [15] Եբր. Փորեցին ինձ ամբարտաւանք փոսս, որ չեն ըստ օրինաց քոց։

ի նամիր հալածեցին զիս, օգնեա ինձ,
87 Փոքր մի եւս եւ կորուսանէին զիս յերկ-
րի, այլ ես ոչ թողի զպատուիրանս քո։
88 Ըստ ողորմութեան քում կեցո զիս, եւ
պահեցից զվկայութիւնս բերանոյ քո։

89 Յաւիտեան, Տէր, բան քո կայ յերկինս։
90 Ազգէ մինչեւ յազգ է ճշմարտութիւն քո.
91 հաստատեցեր զերկիր, եւ կայ [1]Հրամանի
քում միայ տիւ", զի ամենայն ծառայք
92 քո են։ Եթէ ոչ օրէնք քո [2]խօսք իմ էին
զիս, կանխաւ եւս արդեւք կորուսեալ էի
93 ի խոնարհութեան իմում։ Յաւիտեան ոչ
մոռացայց [3]զարդարութիւնս քո, զի նո-
94 քօք կեցուցեր զիս։ Քո եմ ես եւ կեցո
զիս, զի [3]զարդարութիւնս քո խնդրեցի։
95 Ինձ ապասեցին մեղաւորք ի կորուսանել
զիս, զի զվկայութիւնս քո ես ի միտ առի։
96 Ամենայն կատարածի տեսի զվախճան,
յոյժ անդորր էին ինձ պատուիրանք քո։

97 Ո՜րպէս սիրեցի զօրէնս քո, զօրհանապազ
98 [4]խօսք իմ էին։ Քան զթշնամիս իմ իմաս-
տուն [5]արարեր զիս ի պատուիրանն" քո,
99 զի յաւիտեան իմ էին։ Քան զամենայն
ուսուցիչս իմ իմաստուն եղէ, զի վկա-
100 յութիւնք քո [4]խօսք իմ էին։ Քան զծերս
իմաստուն եղէ, զի զպատուիրանս քո
101 [6]քննեցի։ Յամենայն ճանապարհաց չա-
րաց արգելի զոտս իմ, որպէս զի պա-
102 հեցից զբանս քո։ Յիրաւանց քոց ես ոչ
խոտորեցայ, զի դու օրէնսդէտ արա-
103 րեր զիս։ Որպէս զի՜ քաղցր են ի քիմս
իմ բանք քո. քան զմեղր բերանոյ ի-
104 մոյ։ Ի պատուիրանաց քոց իմացեայ
ատեցի զամենայն ճանապարհս չարաց,
[7]զի դու օրէնսդէտ արարեր զիս։"

105 Ճրագ են բանք քո ոտից իմոց, եւ լոյս
106 շաւղաց իմոց։ Երդուայ եւ հաստա-
տեցի, զի պահեցից զամենայն իրաւունս
107 արդարութեան քո։ Խոնարհ եղէ մին-
չեւ յոյժ. Տէր, կեցո զիս ըստ բանի
108 քում։ Ընդ կամս բերանոյ իմոյ հաճեաց,
Տէր, եւ զիրաւունս քո ուսո ինձ.
109 Անձն իմ [8]ի ձեռս քո" յամենայն ժամ,
110 եւ զօրէնս քո ես ոչ մոռացայ։ Եդին
ինձ մեղաւորք որոգայթ, ի պատուիրա-

[1] Եբր. Ըստ հրամանի քում մնան այսօր [2] Եբր. բերկրութիւն [3] Եբր. զպատուիրանս [4] Եբր. խորհուրդ [5] Կամ, արարին զիս պատուիրանք [6] Եբր. պահեցի [7] Յնբ. [illegible] [8] Եբր. ի ձեռին իմում

111 նաց քոց ես ոչ մոլորեցայ։ Ժառանգեցի
զվկայութիւնս քո յաւիտեան, զի ցնծու-
112 թիւն է սրտի իմոյ։ Խոնարհեցուցի
զսիրտ իմ առնել զարդարութիւնս քո
յաւիտեան [9]վասն հատուցման"։

113 [10]Զանօրէնս ատեցի, եւ զօրէնս քո սի-
114 րեցի։ Օգնական եւ փրկիչ իմ ես դու, եւ
115 ես ի բանս քո յուսացայ։ Ի բաց եղերուք
յինէն, չարք, եւ [11]քննեցից զպատուի-
116 րանս Աստուծոյ իմոյ։ Օգնեա ինձ ըստ
բանի քում եւ կեցո զիս, եւ մի՛ յամօթ
117 առներ զիս ի յուսոյ իմմէ։ Օգնեա ինձ եւ
ապրեցո զիս, եւ խորհեցայց յիրաւունս
118 քո յամենայն ժամ։ Անարգեցեր զամե-
նեսեան որ ապստամբ եղեն յարդարու-
թեանց քոց, զի անիրաւութեամբ էին
119 խորհուրդք նոցա։ [12]Յանցաւորս համարե-
ցայ" զամենայն մեղաւորս երկրի, վասն
120 այսորիկ սիրեցի զպատուիրանս քո։ [13]Բե-
ւեռեա ընդ երկեւղ քո զմարմին իմ,
զի" ի դատաստանաց քոց երկեայ յոյժ։

121 Արարի իրաւունս եւ արդարութիւն,
մի՛ մատներ զիս ի ձեռս նեղչաց իմոց։
122 Ընկալ զծառայս քո ի բարի, զի մի՛
123 ամբարտաւանք զրկեսցեն զիս։ [14]Սպա-
սեցին աչք իմ փրկութեան քում, Տէր,
124 եւ բանից արդարութեան քո։ Արա ընդ
ծառայի քում ըստ ողորմութեան
քում, զարդարութիւնս քո ուսո ինձ։
125 Ծառայ քո եմ ես, իմաստուն արա զիս, եւ
126 ծանեայց զվկայութիւնս քո։ Ժամ է
առնել Տեառն. խափանեցին զօրէնս քո։
127 Վասն այսորիկ սիրեցի զպատուիրանս
քո քան զամենայն ոսկի եւ զտպազիոն։
128 Ամենայն պատուիրանք քո աջողեցան
ինձ, զի ատեցի ես զճանապարհս չարաց։

129 Սքանչելի են վկայութիւնք քո, վասն
այսորիկ [15]սիրեաց զնոսա անձն իմ։
130 Յայտնութիւն բանից քոց լուսաւորէ եւ
131 իմաստուն առնէ զտղայս։ Զբերան իմ
բացի եւ առի զհոգի, ի պատուիրանս քո
132 փափաքէաց անձն իմ։ Նայեա առ իս եւ
ողորմեա ինձ, ըստ իրաւունս սիրողաց
133 անուան քում։ Զճանապարհս իմ ուղիղ
արա ինձ ըստ բանի քում, եւ մի՛ տիրես-
134 ցեն ինձ ամենայն մեղք։ Փրկեա զիս ի

[9] Եբր. ի սպառ [10] Եբր. Զերկմիտս [11] Եբր. պահեցից [12] Եբր. Կշկռանս համարեցար [13] Եբր. Սոսկացաւ յահէ քումմէ մարմին իմ եւ ես [14] Եբր. Նուաղեցան [15] Եբր. պահեաց

զրպարտութենէ մարդկան, եւ պահեցից
135 զպատուիրանս քո։ Երեւեցո զերեսս
քո ի ծառայս քո, եւ ուսո ինձ զարդա-
136 րութիւնս քո։ Վտակք ջուրց իջին յա-
չաց իմոց, զի ոչ պահեցին զօրէնս քո։

137 Արդար ես դու, Տէր, եւ ուղիղ են դա-
138 տաստանք քո։ Պատուիրեցեր զարդա-
րութիւն վկայութեանց քոց, եւ ճշմա-
139 րիտ են յոյժ։ Մաշեաց զիս նախանձ[1] քո,
զի մոռացան զբանս քո թշնամիք իմ։
140 Ընտրեալ են բանք քո յոյժ, եւ ծառայ քո
141 սիրեաց զայն։ Մանուկ եմ ես եւ արհա-
մարհեալ, եւ զարդարութիւնս քո ես ոչ
142 մոռացայ։ Արդարութիւն քո արդարու-
թիւն յաւիտենից, եւ օրէնք քո ճշմարիտ
143 են։ Նեղութիւնք եւ վիշտք գտին զիս,
144 եւ պատուիրանք քո [2]խօսք իմ էին։ Ար-
դարութեամբ են վկայութիւնք քո յա-
ւիտեան. իմաստուն արա եւ կեցո զիս։

145 Կարդացի առ քեզ բոլորով սրտիւ իմով,
լուր ինձ, Տէր, զի զարդարութիւնս քո
146 խնդրեցից։ Աղաղակեցի առ քեզ եւ փրկեա
զիս, եւ պահեցից զվկայութիւնս քո։
147 Կանխեցի տարաժամու՝ աղաղակեցի,
148 եւ ես ի բանս քո յուսացայ։ Կանխեցին
աչք իմ առաւօտուց, [3]ի խօսել ինձ
149 զբանս քո։ Զայնի իմում լուր, Տէր, ըստ
ողորմութեան քում. Տէր, յիրաւունս
150 քո կեցո զիս։ [4]Մերձեցուցին յիս հալա-
ծիչք իմ զանօրէնութիւն, զի՞ յօրինաց
151 քոց հեռի եղեն։ Մերձ ես դու, Տէր, եւ
ամենայն պատուիրանք քո ճշմարիտ են։
152 Ի սկզբանէ ծանեայ ի վկայութեանց քոց,
զի յաւիտեան հաստատեցեր զնոսա։

153 Տես զխոնարհութիւն իմ եւ փրկեա զիս,
154 զի զօրէնս քո ես ոչ մոռացայ։ Դատեա
զդատաստանս իմ եւ փրկեա զիս, եւ ըստ
155 բանի քում կեցո զիս։ Հեռի է ի մեղա-
ւորաց փրկութիւն, զի զիրաւունս քո
156 ոչ պահեցին։ Գթութիւնք քո բազում
են, Տէր. եւ ըստ իրաւանց քոց կեցո զիս։
157 Բազում են որ հալածեն եւ նեղեն զիս,
ի վկայութեանց քոց ես ոչ խոտորեցայ։
158 Հայէի յանարգոյնս եւ մաշէի, զի զպա-
159 տուիրանս քո ոչ պահեցին։ Տես զի զպա-
տուիրանս քո սիրեցի. Տէր, ողորմու-
160 թեամբ քո կեցո զիս։ Սկիզբն բանից
քոց ճշմարտութիւն է, յաւիտեան են
ամենայն իրաւունք արդարութեան քո։

161 Իշխանք հալածեցին զիս ի նանիր, եւ ի
162 բանից քոց երկեաւ սիրտ իմ։ Ցնծացայ
ես ի բանս քո, որպէս այն որ գտանէ ա-
163 ւար բազում։ Զմեղս ատեցի եւ անար-
164 գեցի, եւ զօրէնս քո սիրեցի։ Եւթն ան-
գամ յաւուր օրհնեցից զքեզ, վասն իրա-
165 ւանց արդարութեան քո։ Խաղաղութիւն
բազում է այնոցիկ որ սիրեն զօրէնս քո,
եւ ոչ գոյ ի նոսա գայթակղութիւն։
166 Սպասեցի փրկութեան քում, Տէր, եւ
167 զպատուիրանս քո [5]սիրեցի։ Պահեաց
անձն իմ զվկայութիւնս քո, եւ սիր-
168 եաց զնոսա յոյժ։ Պահեցի զպատուի-
րանս եւ զվկայութիւնս քո, զի ամե-
նայն ճանապարհք իմ առաջի քո են։

169 Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո,
Տէր. ըստ բանի քում իմաստուն արա
170 զիս։ Մտցեն աղօթք իմ առաջի քո, Տէր.
171 եւ բանիւ քով փրկեա զիս։ Բղխեսցեն
շրթունք իմ զօրհնութիւնս քո, յորժամ
ուսուսցես ինձ զարդարութիւնս քո։
172 Խօսեսցի լեզու իմ զբանս քո, զի ամե-
նայն պատուիրանք քո արդարութեամբ
173 են։ Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս,
174 զի զպատուիրանս քո ընտրեցի։ Ցան-
կացայ փրկութեան քում, Տէր, եւ օրէնք
175 քո [2]խօսք իմ էին։ Կեցցէ անձն իմ, եւ
օրհնեսցէ զքեզ, եւ իրաւունք քո օգ-
176 նեսցեն ինձ։ Մոլորեցայ ես որպէս ոչ-
խար կորուսեալ. խնդրեա զծառայս քո,
զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ։

## ՍԱՂՄՈՍ ՃԺԹ (ՃԻ)

*Օրհնութիւնք աստիճանաց։*

1 Ի նեղութեան իմում ես առ Տէր կար-
2 դացի, եւ լուաւ ինձ։ Տէր, փրկեա զանձն
իմ ի շրթանց նենգաւորաց եւ ի լեզուէ
3 չարէ։ Զի՞ տացի քեզ կամ զի՞նչ յաւելցի,
4 լեզու նենգաւոր։ [6]Որպէս նետք հզօրի,
զի սրեալ են կայծակամբք կաղնեայ։
5 Վայ է ինձ՝ զի [7]ընդ երկար՝՝ եղեւ պան-
դխտութիւն իմ, բնակեցի ես ի վրանս
6 Կեդարու։ Բազում անգամ բնակեաց
անձն իմ ընդ այնոսիկ որք ատէին

[1] Եբր. իմ [2] Եբր. բերկրութիւն [3] Եբր. ի խորհել [4] Եբր. Մերձեցան որ զհետ երթան անօրէնութեան,

[5] Եբր. արարի [6] Յեբր. պակասէ [7] Եբր. ի Մոսոք

7 զողջոյն ։ Ես էի խաղաղարար . յորժամ
խօսէի՝ մարտնչէին ընդ իս ։

## ՍԱՂՄՈՍ ՃԻ (ՃԻԱ)

*Օրհնութիւնք աստիճանաց*

1 Համբարձի զաչս իմ ի լերինս , ուստի
2 եկեսցէ ինձ օգնութիւն ։ Օգնութիւն
ինձ ի Տեառնէ եկեսցէ , որ արար զեր-
3 կինս եւ զերկիր ։ Մի՛ [1]տար ի սասա-
նութիւն զոտն քո , եւ մի՛ ննջեսցէ
4 Պահապան քո ։ Ո՛րպէս ոչ ննջէ եւ ոչ
ի քուն երթայ Պահապանն Իսրայելի ։
5 [2]Տէր պահեսցէ զքեզ , եւ Տէր ընկալցի
6 աջոյ ձեռամբ իւրով՝՝ Արեգակն ի տուէ
քեզ մի՛ մեղիցէ , եւ մի՛ լուսին ի գի-
7 շերի ։ Տէր պահեսցէ զքեզ յամենայն
8 չարէ , պահեսցէ Տէր զանձն քո ։ Տէր
պահեսցէ զմուտ եւ զել քո յայսմ հետէ
մինչեւ յաւիտեան ։

## ՍԱՂՄՈՍ ՃԻԱ (ՃԻԲ)

*Օրհնութիւնք աստիճանաց* [3]։

1 Ուրախ եղէ ես ոյք ասէին ցիս , Ի տուն
2 Տեառն երթիցուք մեք ։ Հասեալ կային
ոտք մեր առ դրունս քո , Երուսաղէմ ։
3 [4]Զերուսաղէմ շինեալ քաղաք , եւ մնա-
4 կութիւն իւր շուրջ զնովաւ ։՝՝ Անդ ելին
ազգք , ազգք Տեառն , վկայութիւնք Իս-
րայելի , խոստովան լինել անուան Տեառն ։
5 Անդ արկեալ են աթոռք դատաստանի ,
6 [5]աթոռս արկեալ ի տան Դաւթի ։ Հար-
ցէք զողջունէ զԵրուսաղեմի , եւ գլի-
7 նութենէ՝ ոյք սիրէք զնա ։՝՝ Եղիցի խա-
ղաղութիւն [6]ի զօրութեան քում , եւ լի-
8 նութիւն յաշտարակս յամուրս՝՝ քո ։ Վասն
եղբարց եւ ընկերաց իմոց խօսեցայ
9 զխաղաղութիւն վասն քո . Եւ վասն
տան Տեառն Աստուծոյ մերոյ խնդրե-
ցաք զբարութիւն քեզ ։

## ՍԱՂՄՈՍ ՃԻԲ (ՃԻԳ)

*Օրհնութիւնք աստիճանաց ։*

1 Առ քեզ , Տէր , համբարձի զաչս իմ ,
2 որ բնակեալդ ես ի յերկինս ։ Որպէս
աչք ծառայից ի ձեռս տերանց իւրեանց ,
որպէս աչք աղախնոյ ի ձեռս տիկնոջ
իւրոյ , այնպէս են աչք մեր առ քեզ ,
Տէր Աստուած մեր , մինչեւ ողորմեսցիս
3 ի վերայ մեր ։ Ողորմեաց մեզ , Տէր ,
ողորմեաց մեզ , զի բազում լցաք ար-
4 համարհանօք ։ Եւս առաւել լցան ան-
ձինք մեր նախատանօք [7]որ նախատէին
զմեզ՝՝ , եւ արհամարհանօք ամբարտա-
ւանից ։

## ՍԱՂՄՈՍ ՃԻԳ (ՃԻԴ)

*Օրհնութիւնք աստիճանաց* [3]։

1 Եթէ ոչ Տէր էր առ մեզ , ասասցէ Իս-
2 րայէլ , Եթէ ոչ Տէր էր առ մեզ , ընդ
3 յառնել մարդկան ի վերայ մեր , կենդան-
ւոյն կամէին կլանել զմեզ , ի բարկանալ
սրտմտութեամբ նոցա ի վերայ մեր .
4 Ապա եւ ջուրք ուրեմն ընկլուզանէին
զմեզ , ընդ ուղխս անցին անձինք մեր .
5 Անցին անձինք մեր ընդ ջուրս անդա-
6 դարս ։ Օրհնեալ է Տէր , որ ոչ ետ զմեզ
7 յորս ատամանց նոցա ։ Անձինք մեր
ապրեցան որպէս ճնճղուկ յորոգայթէ
որսողաց . որոգայթք նոցա փշրեցան , եւ
8 մեք ապրեցաք ։ Օգնութիւն է մեզ յա-
նուանէ Տեառն , որ արար զերկինս եւ
զերկիր ։

## ՍԱՂՄՈՍ ՃԻԴ (ՃԻԵ)

*Օրհնութիւնք աստիճանաց ։*

1 Որ յուսայ ի Տէր որպէս լեառն Սիոն ,
[8]մի՛ սասանեսցի յաւիտեան՝ որ բնակեալն
2 է յԵրուսաղէմ ։ Լերինք՝՝ շուրջ են զնո-
վաւ , Տէր շուրջ է զժողովրդեամբ իւ-
րով յայսմ հետէ մինչեւ յաւիտեան ։
3 Ոչ թողու Տէր զգաւազան մեղաւորաց
ի վիճակս արդարոց , [9]եւ արդարք մի՛
ձգեսցեն զձեռս իւրեանց յանօրէնու-
4 թիւն ։ Բարի արա Տէր բարեաց , եւ
5 այնոցիկ ոյք ուղիղ են սրտիւք ։ Իսկ
զթիւրեալս [10]ի յափշտակութիւն , տարի
զնոսա Տէր ընդ այնոսիկ ոյք գործեն
զանօրէնութիւն ։ Խաղաղութիւն ի վե-
րայ Իսրայելի ։

---

[1] Եբր. տացէ [2] Եբր. Տէր պահապան քո . Տէր հովանի քո ընդ աջմէ քումմէ ։ [3] Եբր.ը յաւելու , Դաւթի [4] Եբր. Երուսաղէմ , շինեալ որպէս քաղաք , որ ամփոփեալ է յինքեան միահամուռ ։ [5] Եբր. աթոռք տանն Դաւթի ։ (6) Խնդրեցէք ողջոյն Երուսաղեմի . խաղաղ եղիցին ոյք սիրեն զքեզ ։ [6] Եբր. ի պարիսպս քո , անդորրութիւն յապարանս

[7] Եբր. բարեկեցաց [8] Եբր. մի՛ սասանեսցի . յաւիտեան կացցէ մնասցէ ։ (2) Երուսաղէմ , լերինք [9] Եբր. զի [10] Եբր. ի խոտորել իւրեանց

## ՍԱՂՄՈՍ ՃԻԵ (ՃԻԶ)

*Օրհնութիւնք աստիճանաց։*

1 Ի դարձուցանել Տեառն զգերութիւն
Սիոնի, եղաք ¹մեք մխիթարեալք՝՝։
2 Յայնժամ լցան բերանք մեր խնդութեամբ,
եւ լեզուք մեր ցնծութեամբ. յայնժամ
ասասցեն ի հեթանոսս, Մեծ արար Տէր
3 առնել ընդ նոսա։ Մեծ արար Տէր
զառնել իւր ընդ մեզ, եւ մեք եղաք
4 բերկրեալք։ Դարձո, Տէր, զգերութիւնս
5 մեր որպէս զուղխս ի հարաւոյ։ Որք վա-
րեն արտասուօք՝ ցնծութեամբ հնձես-
6 ցեն։ Երթային երթային եւ լային որք
բարձեալ տանէին զսերմանիս իւրեանց,
դառնալ եկեսցեն եւ ցնծասցեն, որք առ-
եալ բերիցեն զորայս իւրեանց։

## ՍԱՂՄՈՍ ՃԻԶ (ՃԻԷ)

*Օրհնութիւնք ²աստիճանաց։*

1 Եթէ ոչ Տէր շինէ զտուն, ի նանիր վաս-
տակեն շինողք նորա. եթէ ոչ Տէր պա-
հէ զքաղաք, ընդունայն տքնին պահա-
2 պանք նորա։ Ի նանիր է ձեզ յառնելն
կանխաւ. ³արդ արիք՝ մինչչեւ էք նստե-
ալ, եւ որք ուտէք զհաց ցաւոց, ի
ժամանակի որպէս տացէ՝՝ քուն սիրե-
3 լեաց իւրոց։ Ժառանգութիւն Տեառն որ-
դիք են, ⁴որոյ վարձք իւր են, այն է
4 պտուղ որովայնի իւրոյ՝՝։ Որպէս նետք
ի ձեռս հզօրի, այնպէս են որդիքն ⁵թօ-
5 թափելոց։ Երանի որ լցցէ ⁶զցանկու-
թիւն իւր ի նոցանէն. մի՛ ամաչեսցեն՝
յորժամ խօսիցին թշնամիք նոցա ընդ
նոսա առ դրանն։

## ՍԱՂՄՈՍ ՃԻԷ (ՃԻԸ)

*Օրհնութիւնք աստիճանաց։*

1 Երանի՛ ամենեցուն որք երկնչին ի Տեառ-
նէ, եւ գնան ի ճանապարհս նորա։
2 Զվաստակս ձեռաց քոց կերիցես, երանի
3 է քեզ, եւ բարի ⁷եղիցի։ Կին քո որ-
պէս ⁸այգի վայելուչ՝՝ յանկիւնս տան քո,
որդիք քո որպէս նորատունկ ձիթենւոյ
4 շուրջ զսեղանով քով։ Այսպէս օրհնեսցի
ամենայն մարդ որ երկնչի ի Տեառնէ։
5 Օրհնեսցէ զքեզ Տէր ի Սիոնէ, եւ տես-
ցես դու զբարութիւն ⁹յԵրուսաղէմ զա-
6 մենայն աւուրս կենաց քոց. Տեսցես
դու զորդիս որդւոց քոց։ Խաղաղութիւն
ի վերայ Իսրայելի։

## ՍԱՂՄՈՍ ՃԻԸ (ՃԻԹ)

*Օրհնութիւնք աստիճանաց։*

1 Բազում անգամ մարտեան ընդ իս ի
մանկութենէ իմմէ, ասասցէ Իսրայէլ.
2 Բազում անգամ մարտեան ընդ իս ի
մանկութենէ իմմէ, եւ ինձ ոչ յաղթե-
3 ցին։ ¹⁰Զթիկունս իմ հարին մեղաւորք,
ընդ երկար արարին զանօրէնութիւնս՝՝
4 իւրեանց։ Տէր արդար է, խորտակէ
5 ¹¹զուլն մեղաւորաց։ Ամաչեսցեն եւ յետս
դարձցին ամենեքեան որք ատեան զՍիոն։
6 Եղիցին նոքա որպէս խոտ տանեաց, որ
7 մինչչեւ ի բուռն եկեալ՝ չորացաւ. Ուս-
տի ոչ լից զբուռն իւր հնձօղն, եւ ոչ
8 զգիրկս իւր՝ որ զորայն ժողովէր։ Ոչ
ասացին ամենեքեան որք անցանէին առ
նոքօք, թէ Օրհնութիւն Տեառն ընդ
ձեզ, եւ օրհնեցաք զձեզ յանուանէ
Տեառն։

## ՍԱՂՄՈՍ ՃԻԹ (ՃԼ)

1 *Օրհնութիւնք աստիճանաց։*

2 Ի խորոց կարդացի առ քեզ, Տէր. Տէր,
լուր ձայնի իմում. եղիցին ականջք քո
3 ի լսել զձայն աղօթից իմոց։ Թէ զանօ-
րէնութիւնս իմ քննես, Տէր, Տէր, իսկ
4 ո՞ կարէ կալ առաջի քո։ Զի ի քէն է
քաւութիւն. ¹²վասն անուան քո համ-
5 բերի, Տէր։ Համբեր անձն իմ բանի
6 քում, յուսացաւ անձն իմ ի Տէր։ Ի
7 պահէ առաւօտու մինչեւ յերեկոյ, ի
պահէ առաւօտու յուսացաւ՝՝ Իսրայէլ ի
Տէր. ի Տեառնէ է ողորմութիւն, եւ
8 բազում ի նմանէ է փրկութիւն. Եւ նա
փրկէ զԻսրայէլ յամենայն ¹³անօրէնութեանց
նորա։

---

¹Եբր. որպէս որ տեսանեն զերազ ²Եբր. աստիճանաց Սողոմոնի ³Եբր. հանգչել անագան, ուտել հաց ցաւոց, զի նա տայ ⁴Եբր. վարձք նորա պտուղ որովայնի ⁵Եբր. երիտասարդութեան ⁶Եբր. զկապարճ ⁷Եբր. եղիցի քեզ ⁸Եբր. զօրթ պտղաբեր

⁹Եբր. Երուսաղեմի ¹⁰Եբր. Ի վերայ թիկանց իմոց հերկեցին հերկողք, ընդ երկար արարին զակօս ¹¹Եբր. զտոռունս ¹²Եբր. վասն որոյ երկիցեն ի քէն։ (5) Համբերի Տեառն, համբեր անձն իմ, եւ բանի նորա յուսացայ։ (6) Անձն իմ սպասէ Տեառն, առաւել քան պահապանք առաւօտու, պահապանք առաւօտու։ (7) Յուսասցէ ¹³Եբր. անօրէնութեանց

## ՍԱՂՄՈՍ ՃԼ (ՃԼԱ)

*Օրհնութիւնք աստիճանաց[1]։*

1 Տէր, ոչ բարձրացաւ սիրտ իմ, եւ ոչ
գոռոզան աչք իմ. ոչ գնացի ես [2]ընդ
մեծամեծս, եւ ոչ ընդ այնոսիկ որ սքան-
2 չելի եղեն քան զիս։ Բայց թէ խոնար-
հեցայ ես՝ որպէս մանուկ հատուցեալ ի
ստենէ մօր իւրոյ, [3]եւ զարձ նորա անդ-
րէն ի նոյն. այլ թէ հպարտացուցի ար-
գելք զանձն իմ, այսպէս եղիցի հա-
3 տուցումն անձին իմոյ։ Յուսացաւ՝ Իս-
րայէլ ի Տէր յայսմհետէ մինչեւ յաւի-
տեան։

## ՍԱՂՄՈՍ ՃԼԱ (ՃԼԲ)

*Օրհնութիւնք աստիճանաց։*

1 Յիշեա, Տէր, զԴաւիթ, եւ զամենայն
2 [4]հեզութիւն նորա։ Որպէս երդուաւ
Տեառն, եւ ուխտ եդ [5]Աստուծոյ Յա-
3 կոբայ. Թէ ոչ մտից ի յարկս տան ի-
մոյ, թէ ելից յանկողինս մահճաց իմոց,
4 Թէ տաց քուն աչաց իմոց, կամ նինջ
արտեւանաց [6]իմոց, կամ հանգիստ ի-
5 րանաց իմոց, Մինչեւ գտից տեղի յար-
6 կի Տեառն Աստուծոյ Յակոբայ։՝ Ահա
լուաք զնմանէ յԵփրաթա, եւ գտաք
7 զնա ի դաշտս մայրեաց։ Մտցուք ի յարկս
նորա, երկիր պագցուք ի տեղւոջ ուր
8 կացին ոտք նորա։ Արի, Տէր, ի
հանգիստ քո, դու եւ տապանակ կտակի
9 [7]սրբութեան քո։ Երիցունք քո զգեցցին
զարդարութիւն, եւ սուրբք քո ցնծա-
10 լով ցնծասցեն։ Վասն Դաւթի [8]սիրելոյ
քո, մի դարձուցաներ զերեսս [9]քո յօ-
11 ծելոյ քումմէ։՝ Երդուաւ Տէր Դաւթի
ճշմարտութեամբ եւ ոչ ստեաց նմա,
Ի պտղոյ որովայնէ քումմէ նստուցից
12 յաթոռ քո։ Թէ պահեսցեն որդիք քո
զօրէնս իմ, եւ զվկայութիւնս իմ զոր
ուսուցից նոցա, որդիք նոցա նստցին
13 յաւիտեանս յաւիտենից յաթոռ քո։ Հա-
ճեցաւ Տէր ընդ Սիոն, եւ ընտրեաց
14 բնակել ի նմա. Ասէ, Այս է հանգիստ
իմ յաւիտեանս յաւիտենից, ի սմա բնա-
15 կեցայց զի հաճեցայ ընդ սա։ Զորս սո-
րա օրհնելով օրհնեցից, եւ զաղքատս
16 սորա լցուցից հացիւ։ Երիցանց սորա
զգեցուցից զփրկութիւն, եւ սուրբք սո-
17 րա ցնծալով ցնծասցեն։ Անդ ծաղկեցից
զեղջիւր ի Դաւիթ, պատրաստ արարից
18 զճրագ օծելոյ իմոյ։ Թշնամեաց նորա
զգեցուցից զամօթ, այլ ի վերայ նորա
ծաղկեսցի [10]սրբութիւն իմ՝։

## ՍԱՂՄՈՍ ՃԼԲ (ՃԼԳ)

*Օրհնութիւնք աստիճանաց[1],*

1 Զի՞ բարի կամ զի՞ վայելուչ, զի բնա-
2 կեն եղբարք ի միասին։ Որպէս եւղ զի
իջանէ ի գլուխ եւ ի մօրուսն Ահարոնի,
ի մօրուացն իջանէ ի գրապանս զգես-
3 տու նորա։ Որպէս ցօղ զի ցօղէ ի Հեր-
մոնէ ի վերայ լերին Սիոնի. անդ պատ-
րաստեաց Տէր զօրհնութիւն, եւ զկեանս
յաւիտենից։

## ՍԱՂՄՈՍ ՃԼԳ (ՃԼԴ)

*Օրհնութիւնք աստիճանաց։*

1 Ահա օրհնեցէք, ամենայն ծառայք
Տեառն, զՏէր, ո կայք ի տան Տեառն
[11]եւ ի գաւիթս Աստուծոյ մերոյ,՝ ի գի-
2 շերի։ Համբարձէք զձեռս ձեր ի սրբու-
3 թիւն, եւ օրհնեցէք զՏէր։ Օրհնեսցէ
զքեզ Տէր ի Սիոնէ, որ արար զերկինս
եւ զերկիր։

## ՍԱՂՄՈՍ ՃԼԴ (ՃԼԵ)

*Ալէլուիա։*

1 Օրհնեցէք զանուն Տեառն, օրհնեցէք,
2 ծառայք Տեառն, [11]զՏէր. Ո կայք ի տան
Տեառն, ի գաւիթս տան Աստուծոյ մերոյ։
3 Օրհնեցէք զՏէր, զի բարի է Տէր. սաղմոս
ասացէք անուան նորա՝ զի քաղցր է։
4 ԶՅակոբ ընտրեաց իւր Տէր, եւ զԻս-
5 րայէլ ժառանգութիւն իւր։ Ես ծանեայ
զի մեծ է Տէր, եւ Տէր մեծ է քան զա-
6 մենայն [12]կուռս։ Զամենայն զոր ինչ
կամեցաւ՝ եւ արար Տէր յերկինս եւ
7 յերկրի, ի ծով եւ յամենայն խորս։ Հանէ
զամպս ի ծագաց երկրէ, զփայլատա-
կունս իւր յանձրեւս արար, եւ հանէ
զհողմս ի շտեմարանաց իւրոց։
8 Ո եհար զամենայն անդրանիկս Եգիպ-

[1]Եբրայեցին յաւելու, Դաւթի [2]Եբր. ի մեծամեծս եւ ի սքանչելիս քան զիս (2) Բայց եթէ ցածուցի եւ լռեցուցի զանձն իմ [3]Եբր. որպէս մանուկ հատուցեալ ի ստենէ անձն իմ ընդ իս (3) Յուսա. [4]Եբր. նեղութիւն [5]Եբր. Հզօրին [6]Եբր. իմոց, (5) Մինչեւ գտից տեղի Տեառն, յարկս Հզօրին Յակոբայ։ [7]Եբր. զօրութեան [8]Եբր. ծառայի [9]Եբր. օծելոյ քո

[10]Եբր. պսակ նորա [11]ՅԵբր. պակասի [12]Եբր. դիս

տացուց՝ ի մարդոյ մինչև յանասուն։
9 Առաքեաց զնշանս և զարուեստս իւր
ի մէջ քո, Եգիպտոս, ի Փարաւոն և
10 յամենայն զօրս իւր։ Ո հարն զազգս
բազումս, և սպան զթագաւորս հզօրս,
11 ԶՍեհոնն թագաւոր Ամովրհացւոց. զՈվգ
թագաւոր Բասանու, և զամենայն թա-
12 գաւորութիւնս Քանանացւոց. Ետ զեր-
կիր նոցա ի ժառանգութիւն, ժառան-
գութիւն Իսրայելի ժողովրդեան իւրոյ։
13 Տէր, անուն քո յաւիտեան. Տէր, յի-
14 շատակ քո ազգէ մինչև յազգ։ Դատի
Տէր զժողովուրդս իւր, և ի ծառայս
իւր մխիթարի։
15 Կուռք հեթանոսաց արծաթ և ոսկի
են, ձեռագործք են որդւոց մարդկան.
16 Բերան գոյ՝ և ոչ խօսին, աչք են՝ և
17 ոչ տեսանեն. Ականջք են՝ և ոչ լսեն, և
18 ոչ գոյ շունչ ի բերանս նոցա։ Նման նոցա
եղիցին ոյք արարին զնոսա, և ամե-
19 նեքեան ոյք յուսացեալ են ի նոսա։ Տուն
Իսրայելի, օրհնեցէք զՏէր. տուն Ահա-
20 րոնի, օրհնեցէք զՏէր. Տուն Ղևեայ,
օրհնեցէք զՏէր. երկիւղածք Տեառն,
21 օրհնեցէք զՏէր։ Օրհնեալ Տէր ի Սիո-
նէ, որ բնակեալն է յԵրուսաղէմ։ Ա-
լէլուիա։

## ՍԱՂՄՈՍ ՃԼԵ (ՃԼԶ)

1 Խոստովան եղերուք Տեառն, զի քաղցր
2 է. զի յաւիտեան է ողորմ նորա։ Խոս-
տովան եղերուք Աստուծոյն աստուծոց,
3 զի յաւիտեան է ողորմ նորա։ Խոստովան
եղերուք Տեառն տերանց, զի յաւիտեան
է ողորմ նորա։
4 Արար զսքանչելիս մեծամեծս միայն,
5 զի յաւիտեան է ողորմ նորա։ Զերկինս
արար իմաստութեամբ իւրով, զի յա-
6 ւիտեան է ողորմ նորա։ Հաստատեաց
զերկիր ի վերայ ջուրց, զի յաւիտեան
7 է ողորմ նորա։ Արար զլուսաւորս մե-
ծամեծս [1]միայն, զի յաւիտեան է ողորմ
8 նորա։ Զարեգակն արար իշխանական
տուընջեան, զի յաւիտեան է ողորմ
9 նորա. Զլուսին և զաստեղս՝ իշխանա-
կան գիշերոյ, զի յաւիտեան է ողորմ
10 նորա։ Եհար զերկիրն Եգիպտացւոց
անդրանկօք իւրովք հանդերձ, զի յա-
11 ւիտեան է ողորմ նորա. Եւ եհան զԻս-
րայէլ ի միջոյ նորա, զի յաւիտեան է
12 ողորմ նորա. Ի ձեռն բարձր և ի բա-
զուկ իւր հզօր, զի յաւիտեան է ողորմ
13 նորա։ Եհերձ զծովն [2]մեծ և բաժանեաց
յերկուս մասունս, զի յաւիտեան է ո-
14 ղորմ նորա. Եւ անցոյց զԻսրայէլ ընդ
մէջ նորա, զի յաւիտեան է ողորմ նո-
15 րա։ Ընկղմեաց զՓարաւոն և զզօրս
իւր ի ծով Կարմիր, զի յաւիտեան է ո-
16 ղորմ նորա։ Եհան զժողովուրդ իւր յա-
նապատ, զի յաւիտեան է ողորմ նորա։
17 Եհար զթագաւորս մեծամեծս, զի յա-
18 ւիտեան է ողորմ նորա։ Եւ սպան զթա-
գաւորս հզօրս, զի յաւիտեան է ողորմ
19 նորա. ԶՍեհոնն թագաւոր Ամովրհաց-
ւոց, զի յաւիտեան է ողորմ նորա.
20 ԶՈվգ թագաւոր Բասանու, զի յաւի-
21 տեան է ողորմ նորա. Ետ զերկիր նո-
ցա ի ժառանգութիւն, զի յաւիտեան է
22 ողորմ նորա. Ժառանգութիւն Իսրա-
յելի ծառայի իւրոյ, զի յաւիտեան է ո-
23 ղորմ նորա։ Յիշեաց զմեզ Տէր ի խո-
նարհութեան մերում, զի յաւիտեան է
24 ողորմ նորա։ Եւ փրկեաց զմեզ ի ձե-
ռաց թշնամեաց մերոց, զի յաւիտեան
25 է ողորմ նորա։ Ո տայ կերակուր ա-
մենայն կենդանեաց, զի յաւիտեան է
26 ողորմ նորա։ Խոստովան եղերուք Աս-
տուծոյ երկնաւորի, զի յաւիտեան է ո-
ղորմ նորա։

## ՍԱՂՄՈՍ ՃԼԶ (ՃԼԷ)

“Սաղմոս Դաւթի. ի ձեռն Երեմիայի.
աննշան յԵբրայեցւոյն։”

1 Առ գետս Բաբելացւոց՝ անդ նստաք, և
լայաք որպէս յիշեցաք մեք անդ զՍիոն։
2 Ի մէջ ուռեաց նոցա կախեցաք [3]զկառա-
3 բանս մեր։ Անդ հարցանէին զերիչք մեր
զբանս օրհնութեան, գերեվարք մեր
ստիպէին զմեզ և ասէին, Օրհնեցէք
4 մեզ յօրհնութենէն Սիոնի։ Իսկ զիա՞րդ
օրհնեսցուք զօրհնութիւնս Տեառն յեր-
5 կիր օտար։ Եթէ մոռացայց զքեզ, Ե-
6 րուսաղէմ, մոռասցի զիս աջ իմ։ Կցես-
ցի լեզու իմ ի քիմս իմ՝ թէ ոչ յիշեցից
զքեզ, թէ ոչ [4]նախ նուագեցից զքեզ,
Երուսաղէմ, սկիզբն” ուրախութեան ի-
7 մոյ։ Յիշեա, Տէր, զորդիսն Եդովմայ՝
յաւուրն Երուսաղեմի, ոյք ասէին,
Քակեցէք, քակեցէք, մինչև ի հիմն հա-
սուցէք։

[1] Եբր. լոյսս

[2] Եբր. Կարմիր [3] Եբր. զքնարս [4] Եբր. բարձ-
րացուցից զԵրուսաղէմ ի վեր քան զգլուխ

8 Դուստր Բաբելացւոց թշուառական,
երանի որ հատոյց զհատուցումն քո զոր
9 դու մեզ հատուցեր. Երանի որ կալցէ
զմանկունս քո եւ եհար զքարի:

## ՍԱՂՄՈՍ ՃԼԷ (ՃԼԸ)

*Սաղմոս Դաւթի:*

1 Խոստովան եղէց քեզ, Տէր, բոլորով
սրտիւ իմով. առաջի հրեշտակաց սաղ-
2 մոս ասացից քեզ: [1]Զի լուար զբանս
բերանոյ իմոյ," երկիր պագից ի տաճար
սուրբ քո, եւ խոստովան եղէց անուան
քում վասն ողորմութեան եւ ճշմար-
տութեան քո. մեծ արարեր [2]յամենայ-
3 նի զանուն սուրբ քո": Յորում աւուր
կարդամ առ քեզ վաղվաղակի լուր ինձ,
եւ բազում արասցես զօրութիւնս յանձն
4 իմ: Խոստովան եղիցին առ քեզ ամե-
նայն թագաւորք երկրի, զի լուան զբանս
5 բերանոյ քո. Եւ օրհնեսցեն զճանա-
պարհս քո. մեծ են փառք Տեառն:
6 Բարձր է Տէր, զխոնարհս տեսանէ,
7 զբարձունս ի հեռաստանէ ճանաչէ: Թէ
գնացից ես ի մէջ նեղութեանց, կե-
ցուսցես զիս. ի բարկութենէ թշնամ-
եաց ձգեցեր զձեռն քո, եւ փրկեաց
8 զիս աջ քո: Եւ Տէր [3]հատուսցէ ընդ
իմ. Տէր, ողորմութիւն քո յաւիտեան.
զգործս ձեռաց քոց մի անտես առներ:

## ՍԱՂՄՈՍ ՃԼԸ (ՃԼԹ)

*[4]Ի կատարած. Սաղմոս Դաւթի:*

1 Տէր, փորձեցեր զիս եւ ծանեար զիս:
2 Դու ծանեար զնստել իմ եւ զյառնել
իմ. ի միտ առեր զխորհուրդս իմ ի հե-
3 ռաստանէ: Զշաւիղս իմ եւ զվիճակս
իմ դու քննեցեր. եւ զամենայն ճանա-
4 պարհս իմ յառաջագոյն տեսեր. Զի ոչ
գոյ [5]նենգութիւն ի լեզուի իմում. ահա
5 դու, Տէր, [6]ծանեար Զյետինս իմ եւ զա-
ռաջինս իմ, դու ստեղծեր զիս" եւ ե-
6 դիր զձեռն քո ի վերայ իմ: Սքանչելի
[7]եղեւ գիտութիւն քո յինէն, զօրացաւ"
եւ ոչ հանդարտեմ նմա:
7 Յո՞ երթայց ես յՈգւոյ քումմէ, կամ
8 յերեսաց քոց ես յո՞ փախեայց: Թէ ելա-
նեմ յերկինս՝ դու անդ ես. թէ իջանեմ ի
9 դժոխս՝ եւ անդր մօտ ես. Թէ առից զթեւս
[8]իմ ընդ առաւօտս, եւ բնակեցայց յե-
10 զերս" ծովու, Սակայն եւ անդ ձեռն քո
առաջնորդեսցէ ինձ, եւ աջ քո ընկալ-
11 ցի զիս: Ասացի, Խաւար ուրեմն առ-
ղեւք ծածկեայ զիս, [9]կամ գիշեր փո-
խանակ լուսոյ փափկութեան իմոյ":
12 Խաւարն՝ ի քէն ոչ խաւարանայ, եւ գի-
շերն որպէս տիւ լուսաւոր եղիցի, եւ
13 [10]խաւար նորա որպէս զլոյս նորա": Դու
ստացար զերիկամունս իմ, եւ [11]ընկա-
14 լար զիս յորովայնէ" մօր իմոյ: Խոստո-
վան եղէց քեզ, Տէր, զի [12]ահեղ եւ սքան-
չելի ես". սքանչելի են գործք քո, եւ
15 անձն իմ գիտաց յոյժ: Ոչ թաքեաւ
ոսկր իմ ի քէն զոր արարեր ի ծածուկ,
[13]եւ կար զօրութեան իմոյ ընդ ստորինս"
16 երկրի: Զանգործս իմ տեսին աչք քո,
եւ ի գիրս քո ամենեքեան գրեսցին. [14]ի
տուէ մոլորեցան, եւ ոչ ոք էր որ ա-
ռաջնորդէր նոցա":
17 Ինձ յոյժ մեծարոյ եղեն [15]բարեկամք
քո, Աստուած. եւ յոյժ զօրացան [16]իշ-
18 խանք նոցա: Թուեցի զնոսա, եւ քան
զաւազ բազմասցին. զարթեայ եւ սրդ
19 ընդ քեզ եմ: Թէ սպանանես զմեղա-
ւորս, Աստուած. արք արեան, ի բաց
20 եղերուք յինէն: [17]Ի հակառակութիւն եւ
ի նախանձ, առցեն ի նանիր զքաղաքս
21 քո:" Ո՞չ զատելիս քո, Տէր, ատեցի,
եւ ի վերայ թշնամեաց քոց մաշեցայ:
22 Ատելութիւն կատարեալ ատեցի զնո-
23 սա, եւ եղեն ինձ ի թշնամիս: Փորձեա
զիս, Աստուած, եւ ծանիր զսիրտ իմ,
24 քննեա զիս եւ ծանիր զշաւիղս իմ, Եւ
տես թէ իցեն անօրէնութիւնք ի ճանա-
պարհս իմ, եւ առաջնորդեա ինձ ի ճա-
նապարհս [1]քո յաւիտենից:

## ՍԱՂՄՈՍ ՃԼԹ (ՃԽ)

1 *[4]Ի կատարած. Սաղմոս Դաւթի:*

2 Ապրեցո զիս, Տէր, ի մարդոյ չարէ,
3 յառնէ անիրաւէ փրկեա զիս: Խորհե-

---

[1]Յեբր. [illegible] [2]Եբր. քան զամենայն անուն քո զբան քո [3]Եբր. կատարեսցէ [4]Եբր. Առ գլուխ երաժշտացն [5]Եբր. բան [6]Եբր. ծանեար զայս ամենայն: (5) Յետոյ եւ յառաջոյ պաշարեցեր զիս, [7]Եբր. գիտութիւն վասն իմ. բարձր է

[8]Եբր. առաւօտու, և բնակեցայց ի ծագս [9]Եբր. եւ գիշեր՝ լոյս շուրջ զինեւ [10]Եբր. որպէս խաւար՝ նոյնպէս լոյս [11]Եբր. անկար զիս յորովայնի [12]Եբր. սքանչելապէս արարայ. [13]Եբր. յորժամ նկարեցայ յայս [14]Եբր. որ կազմելոց էին ի ժամանակին եւ չգոյր ոչ մին ի նոցանէ [15]Կամ, խորհուրդք [16]Կամ, թիւք [17]Եբր. Որ խօսին չարիս զքէն, խրոխտան ի նանիր ընդդէմ քո:

ցան զանօրէնութիւն ի սիրտս իւրեանց ,
զօր ամենայն պատրաստեցան ի պատե-
4 րազմ ։ Սրեցին զլեզուս իւրեանց որպէս
զօձի , եւ թոյնք իժից ի ներքոյ շրթանց
5 նոցա ։[1] Պահեա զիս , Տէր , ի ձեռաց մե-
ղաւորի , եւ ի մարդոյ չարէ փրկեա զիս.
6 խորհեցան խափանել զգնացս իմ ։ Թա-
քուցին ամբարտաւանք որոգայթ ինձ .
լարս ձգեցին որոգայթ ոտից իմոց , շուրջ
զշաւղօք իմովք եդին ինձ գայթակղու-
թիւն ։[1]
7 Ասացի [2]Տէր Աստուած իմ ես դու .
ունկն դիր , Տէր , ձայնի աղօթից իմոց ։
8 Տէր , Տէր զօրութիւն փրկութեան ի-
մոյ , հովանի գլխոյ իմոյ յաւուր պա-
9 տերազմի ։ Մի մատներ զիս , Տէր , ի
ցանկութիւն [3]մեղաւորաց ոյք խորհե-
ցան վասն իմ , մի ընդ վայր հարկաներ
զիս՝՝, զի մի երբեք բարձրասցին , [4]եւ
խորհուրդք նոցա մի կատարեսցին .
10 Վախճան կատարածի նոցա՝՝ վաստակ
շրթանց իւրեանց ծածկեսցէ զնոսա ։
11 [5]Արկցես ի վերայ նոցա կայծակունս
հրոյ , եւ կործանեսցես զնոսա . ի տա-
12 ռապանաց մի կարասցեն կեալ՝՝ Մար-
դոյ լեզուանւոյ մի յաջողեսցի ի վերայ
երկրի , զայր մեղաւոր չարիք իւր որ-
13 սասցեն ի կորուստ ։ Ծանեայ զի ա-
նես , Տէր , զդատաստան աղքատի , եւ ի-
14 րաւունս տնանկի ։ Արդարք գոհասցին
զանուանէ քումմէ . բնակեսցեն ուղիղք
առաջի երեսաց քոց ։

## ՍԱՂՄՈՍ ՃԽ (ՃԽԱ)

Սաղմոս Դաւթի ։

1 Տէր , կարդացի առ քեզ , [6]եւ լուր ինձ՝՝,
նայեաց ի ձայն աղօթից իմոց ի կարդալ
2 իմում առ քեզ ։ Ուղիղ եղիցին աղօթք
իմ որպէս խունկ առաջի քո , Տէր , համ-
բարձումն ձեռաց իմոց պատարագ ե-
3 րեկոյի ։ Դիր , Տէր , պահապան բերա-
նոյ իմոյ , եւ դուռն ամուր շրթանց ի-
4 մոց , Զի մի խոտորեսցի սիրտ իմ բա-
նիւ չարութեան , ի պատճառել պատ-
ճառս մեղաց ընդ մարդս որ գործեն զա-
նօրէնութիւն . ոչ եղէց կցորդ ընտրե-
5 լեաց նոցա ։ Խրատեսցէ զիս [7]արդարն
ողորմութեամբ՝՝ եւ յանդիմանեսցէ
զիս , եւղ [8]մեղաւորի մի օծցէ զգլուխ
իմ , եւ աղօթք իմ ընդ կամաց նոցա՝՝ ։
6 Ընկլան մերձ առ վիմին դատաւորք նո-
ցա . լուիցեն զբանս իմ , զի քաղցունք
7 են ։ [9]Որպէս թանձրութիւն հողոյ զի
ախեալ է ի վերայ երկրի՝ ցրուեցին
8 ոսկերք նոցա մերձ ի դժոխս՝՝ Առ քեզ ,
Տէր , Տէր , են աչք իմ , ի քեզ յուսա-
9 ցայ , մի հաներ զհոգի յինէն ։ Պահեա
զիս յորոգայթէ որ թաքուցան ինձ , ի
գայթակղութենէ՝ որք գործեն զանօրէ-
10 նութիւն ։ Անկցին ի ցանցս [10]նոցա մե-
ղաւորք , միայն եմ ես՝՝ մինչեւ անցից ։

## ՍԱՂՄՈՍ ՃԽԱ (ՃԽԲ)

1 Իմաստութիւն Դաւթի . աղօթք , ի ժա-
մանակի զի էր նա յայրի անդ ։

2 Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի ,
3 ձայնիւ իմով զՏէր աղաչեցի ։ Հեղեցից
առաջի Տեառն զաղօթս իմ , եւ զնե-
ղութիւնս իմ առաջի նորա պատմեցից ։
4 Ի նուաղել յինէն հոգւոյ իմոյ , դու , Տէր ,
ծանեար զշաւիղս իմ , ի ճանապարհ յոր
եւ գնայի՝ թաքուցան ինձ որոգայթ ։
5 [11]Հայէի յաջմէ եւ տեսանէի , եւ ոչ ոք
էր որ ճանաչէր զիս . կորեաւ յինէն
փախուստ իմ՝՝, եւ ոչ ոք էր որ խնդրէր
6 զանձն իմ ։ Աղաղակեցի առ քեզ , Տէր ,
եւ ասացի , Դու ես յոյս եւ բաժին իմ
7 յերկրին կենդանեաց ։ Նայեաց , Տէր , յա-
ղօթս իմ , զի ես խոնարհ եղէ յոյժ .
ապրեցո զիս ի հալածչաց իմոց , զի հզօր
8 եղեն քան զիս ։ Տէր , հան ի բանտէ
զանձն իմ , գոհանալ զանուանէ քում-
մէ . ինձ սպասեն արդարք [12]քո մինչեւ՝՝
հատուցես ինձ .

## ՍԱՂՄՈՍ ՃԽԲ (ՃԽԳ)

Սաղմոս Դաւթի , [13]ի ժամանակի զի հա-
լածեաց զնա Աբիսողոմ որդի նորա ։՝՝

1 Տէր , լուր աղօթից իմոց , ունկն դիր
խնդրուածոց իմոց ճշմարտութեամբ

[1] Եբրայեցին յաւելու, Հանգիստ [2] Եբր. Տեառն, [3] Եբր. մեղաւորի. մի՛ յաջողեր զխորհուրդ նորա [4] Եբր. Հանգիստ ։ (10) Իսկ գլուխ որոց պաշարեն զիս , [5] Եբր. Կայծակունք հրոյ իջցեն ի վերայ նոցա. արկցին ի հուր, յանդունդս խորս, զի մի՛ յարիցեն ։ [6] Եբր. փութա առ իս

[7] Եբր. արդարն, ողորմութիւն է. [8] Եբր. գլխոյ է. մի՛ մերժեսցէ զայն գլուխ իմ. Նա եւ կացից յաղօթս ի չարիս նոցա [9] Եբր. Որպէս որ հերկէն եւ որ պատառէն յերկրի, ցրուեալ են ոսկերք մեր ի բերան գերեզմանի ։ [10] Եբր. իւրեանց մեղաւորք համօրէն [11] Եբր. Հայեաց յաջ եւ տես, ոչ ոք է որ ճանաչէ զիս. կորեաւ յինէն ապաւէն [12] Եբր. քանզի [13] Եբր. զ—լ—ե

քով. լուր ինձ արդարութեամբ քով։
2 Եւ մի՛ մտանիր ի դատաստան ընդ ծա-
ռայի քո, զի ոչ արդարանայ առաջի քո
3 ամենայն մսեղի։ Հալածեաց թշնամին
զանձն իմ, խոնարհ արար յերկիր զկեանս
իմ. եւ նստոյց զիս ի խաւարի որ-
4 պէս մեռեալ յաւիտենից։ Ձանձրացաւ
յիս հոգի իմ, եւ սիրտ իմ խռովեցաւ
5 յիս։ Յիշեցի զաւուրսն զառաջինս, խոր-
հեցայ յամենայն ի գործս քո. յարա-
6 րածս ձեռաց քոց խորհեցայ։ Համբար-
ձի առ քեզ զձեռս իմ. անձն իմ որպէս
զերկիր ծարաւի է առ քեզ։[1]

7 Վաղվաղակի լուր ինձ, Տէր, զի նուա-
ղեաց յինէն հոգի իմ. մի՛ դարձուցա-
նէր զերեսս քո յինէն, նմանեցայց այ-
8 նոցիկ որ իջանեն ի գուբ։ Լսելի արա ինձ
առաւօտու զողորմութիւնս քո, զի ես
ի քեզ, Տէր, յուսացայ. ցոյց ինձ ճա-
նապարհ յոր գնացից, զի առ քեզ, Տէր,
9 համբարձի զանձն իմ։ Փրկեա զիս ի
թշնամեաց իմոց, Տէր, զի զքեզ ապա-
10 ւէն ինձ արարի։ Ուսո ինձ առնել զկամս
քո, զի դու ես Աստուած իմ. Հոգի քո
բարի առաջնորդեսցէ ինձ յերկիր ու-
11 ղիղ։ Վասն անուան քո, Տէր, կեցուս-
ցես զիս. արդարութեամբ քով հանցես
12 ի նեղութենէ զանձն իմ. Ողորմութեամբ
քով սատակեսցես զթշնամիս իմ. կո-
րուսցես զամենայն նեղիչս անձին իմոյ,
զի ես ծառայ քո եմ։

## ՍԱՂՄՈՍ ՃԽԳ (ՃԽԴ)

Սաղմոս Դաւթի. [2]առ Գողիաթ։"

1 Օրհնեալ Տէր [3]Աստուած իմ, որ ուսոյց
զձեռս իմ ի պատերազմ, եւ զմատունս
2 իմ ի ճակատամարտ։ Ողորմութիւն իմ
եւ ապաւէն իմ, օգնական իմ եւ փրկիչ
իմ. ապաւէն իմ, եւ ես յուսամ ի նա.
ո հնազանդ առնէ զժողովուրդս ընդ ի-
նեւ։

3 Տէր, ո՞ է մարդ զի յայտնեցար նմա,
կամ որդի մարդոյ՝ թէ համարիս ինչ
4 զնա։ Մարդ նանրութեան նմանեաց, եւ
աւուրք նորա որպէս հովանի անցին։

5 Տէր, խոնարհեցո զերկինս եւ էջ,
6 մերձեա ի լերինս՝ եւ ծխեսցին։ Փայ-
լատակեա զփայլատակունս քո եւ խառ-
վեա զնոսա, առաքեա զնետս քո եւ
7 ցրուեա զնոսա։ Առաքեա զձեռն քո ի
բարձանց եւ փրկեա զիս ի ջուրց բազ-
մաց, եւ ի ձեռաց որդւոց օտարաց։
8 Որոց բերանք իւրեանց խօսեցան զնան-
րութիւն, եւ աջ նոցա աջ է մեղաց։

9 Աստուած, յօրհնութիւն նոր օրհնե-
ցից զքեզ, տասնաղեաւ սաղմոսարա-
10 նաւ սաղմոս ասացից քեզ։ Ո տացէ
զփրկութիւն թագաւորաց [2]մերոց, որ
փրկեցերն Դաւիթ ծառայ իւր ի
11 սրոյ չարէ։ Փրկեա զիս եւ ապրեցո ի
ձեռաց որդւոց օտարաց, որոց բերանք
իւրեանց խօսեցան զնանրութիւն, եւ
12 աջ նոցա աջ է մեղաց։ [4]Որոց ուստերք
իւրեանց" որպէս նորատունկ հաստա-
տուն են ի մանկութենէ իւրեանց, դստերք
[5]նոցա զարդարեալ եւ պաճուճեալ" ի
13 նմանութիւն տաճարի. Շտեմարանք
[6]նոցա լի են եւ բղխեն ի միմեանս,
խաշինք նոցա բազմածինք են եւ բազ-
14 մանան ի գնացս իւրեանց. Անդեայք
նոցա" պարարտք են. ոչ գոյ խրամա-
տութիւն ցանկոյ նոցա, եւ ոչ աղաղակ
15 ի հրապարակս [7]նոցա։ Արդ երանեցին"
ժողովրդեան որոյ այս այսպէս է. նա՛
երանի՛ ժողովրդեան որոյ Տէր Աստուած
է նոցա։

## ՍԱՂՄՈՍ ՃԽԴ (ՃԽԵ)

Օրհնութիւն Դաւթի։

1 Բարձր առնեմ զքեզ, Աստուած իմ եւ
Թագաւոր իմ, եւ օրհնեմ զանուն քո
յաւիտեան եւ յաւիտեանս յաւիտենից։
2 Զօրհանապաղ օրհնեցից զքեզ, եւ գո-
վեցից զանուն քո յաւիտեան եւ յաւի-
3 տեանս յաւիտենից։ Մեծ է Տէր եւ օրհ-
նեալ է յոյժ, եւ մեծութեան նորա ոչ
4 գոյ չափ։ Ազգք եւ ազգք գովեսցեն
զգործս քո, եւ զզօրութիւնս քո պատ-
5 մեսցեն։ Զմեծ վայելչութիւն փառաց
սրբութեան քո [2]խօսեսցին, եւ զսքան-
6 չելիս քո [8]պատմեսցեն։ Զզօրութիւն
ահի քոասասցեն, եւ զմեծութիւնս քո
7 [9]պատմեսցեն։ Զյիշատակ բազում քաղց-
րութեան քո բղխեսցեն, եւ արդարու-
8 թեամբ քով ցնծասցեն։ Գթած եւ ողոր-

[1] Եբր. եղիցի յաւելու, Հանգիստ։ [2] Յեբր. պակասէ
[3] Եբր. Վէմ

[4] Եբր. Զի ուստերք մեր [5] Եբր. մեր իբրեւ զանկիւնս քանդակեալս [6] Եբր. մեր լի են, տան արդիւնս ազգի ազգի. խաշինք մեր ծնանին հազարս, ծնանին բեւրս յանդս մեր. (14) Արջառք մեր [7] Եբր. մեր ։(15) Արդ երանի՛ [8] Եբր. խորհեցայց կամ, խօսեցայց [9] Եբր. պատմեցից

մած է Տէր, երկայնամիտ եւ բազմա-
9 ողորմ։ Քաղցր է Տէր առ ամենեսեան,
եւ գթութիւն նորա ի վերայ ամենայն
10 արարածոց իւրոց։ Խոստովան եղիցին առ
քեզ, Տէր, ամենայն գործք քո, եւ սուրբք
11 քո օրհնեսցեն զքեզ։ Զփառս արքայու-
թեան քո ասասցեն, եւ զզօրութիւնս
12 քո պատմեսցեն. [1]Ճանաչել որդւոց
մարդկան զզօրութիւնս քո, եւ զփառս
մեծվայելչութեան արքայութեան քո։
13 Արքայութիւն քո արքայութիւն ամե-
նայն յաւիտենից, եւ աէրութիւն քո
ազգէ մինչեւ յազգ։ [2]Հաւատարիմ է
Տէր յամենայն ի բանս իւր, եւ արդար
է յամենայն ի գործս իւր։"
14 Հաստատէ Տէր զամենայն գայթակ-
ղեալս, եւ կանգնէ զամենայն գլորեալս։
15 Աչք ամենեցուն ի քեզ յուսան, եւ դու
տաս կերակուր նոցա ի ժամու. տաս զու-
16 նոցա եւ կերակրիս։ Բանաս զձեռն քո, եւ
լցուցանես [3]զամենեսեան քաղցրու-
17 թեամբ կամօք քովք։ Արդար է Տէր
յամենայն ճանապարհս իւր, եւ [4]սուրբ
է յամենայն ի գործս իւր։
18 Մերձ է Տէր առ ամենեսեան որ կարդան
առ նա, առ ամենեսեան որ կարդան առ
19 նա ճշմարտութեամբ։ Զկամս երկիւ-
ղածաց իւրոց առնէ Տէր, աղօթից նո-
20 ցա լսէ եւ կեցուցանէ զնոսա։ Պահէ
Տէր զամենեսեան որ սիրեն զնա, եւ
զամենայն մեղաւորս սատակէ Տէր։
21 Զօրհնութիւնս Տեառն խօսեսցի բերան
իմ. օրհնեսցէ ամենայն կենդանի զա-
նուն սուրբ նորա յաւիտեան, եւ յաւի-
տեանս յաւիտենից։

ՍԱՂՄՈՍ ՃԽԵ (ՃԽԴ)

1 Ալէլուիա. [2]Անգեայ եւ Զաքարեայ։"

2 Օրհնեա, անձն իմ, զՏէր. օրհնեցից
զՏէր ի կեանս իմ, սաղմոս ասացից
3 Աստուծոյ իմոյ մինչեւ եմ ես։ Մի յու-
սայք յիշխանս՝ յորդիս մարդկան, զի ոչ
4 գոյ փրկութիւն ի նոսա։ Ելցէ հոգի ի
նոցանէ՝ եւ դարձցին անդրէն ի հող, եւ
յայնմ աւուր կորիցեն ամենայն խոր-
5 հուրդք նոցա։ Երանի ում Տէր Աստուած
Յակոբայ օգնական է նմա, եւ յոյս նո-
6 րա ի Տէր Աստուած է։ Որ արար զեր-
կինս եւ զերկիր, զծով եւ զամենայն
որ է ի նոսա. ո պահէ զճշմարտութիւն
7 յաւիտեան, Եւ առնէ իրաւունս զրկե-
լոց. տայ հաց քաղցելոց, եւ արձակէ
8 զկապեալս Տէր։ Տէր բանայ զաչս կու-
րաց, եւ կանգնէ զգլորեալս Տէր. Տէր
9 սիրէ զարդարս։ Տէր պահէ զպան-
դուխտս. զորբս եւ զայրիս ընդունի
Տէր, եւ զճանապարհս ամպարշտաց
10 կորուսանէ։ Թագաւորեսցէ Տէր յաւի-
տեան, Աստուած քո, Սիոն, ազգէ
մինչեւ յազգ։ Ալէլուիա։

ՍԱՂՄՈՍ ՃԽԶ (ՃԽԵ)

[2]Ալէլուիա. Անգեայ եւ Զաքարեայ։"

1 Օրհնեցէք զՏէր, զի բարի [5]են սաղ-
մոսք Աստուծոյ մերում. քաղցր ե-
2 ղիցի" օրհնութիւն։ Շինէ զԵրուսաղէմ
Տէր, եւ զցրուեալսն Իսրայէլի ժողովէ։
3 Բժշկէ զբեկեալ սիրտս, եւ պատէ զա-
4 մենայն վէրս նոցա։ Ո թուէ զբազմու-
թիւն աստեղաց, եւ զամենեսեան զնո-
5 սա յանուանէ կոչէ։ Մեծ է Տէր մեր
եւ մեծ է զօրութիւն նորա, իմաստու-
6 թեան նորա ոչ գոյ թիւ։ [6]Ընդունի զհեզս
Տէր, եւ խոնարհ առնէ զամբարտաւանս
7 մինչեւ յերկիր։ Օրհնեցէք զՏէր խոս-
տովանութեամբ, սաղմոս ասացէք նմա
8 օրհնութեամբ։ Զգեցոյց զերկինս ամ-
պովք, պատրաստ արար զանձրեւ իւր
յերկիր, բուսոյց զխոտ ի լերինս, [2]զզա-
9 լարն ի ծառայութիւն մարդկան։" Ան
որ տայ անասնոց զկերակուր իւրեանց,
ձագուց ագռաւուց՝ որ կարդան առ նա։
10 Ոչ թէ ընդ զօրութիւնս ձիոյ կամեցաւ
Տէր, եւ ոչ ընդ երանս առն սկայի հա-
11 ճեցաւ։ Այլ հաճեցաւ Տէր ընդ երկիւղածս
իւր, եւ ընդ այնոսիկ որք յուսան յողոր-
մութիւն նորա։

[7]ՍԱՂՄՈՍ ՃԽԷ"

[2]Ալէլուիա. Անգեայ եւ Զաքարեայ։"

12 Գովեա, Երուսաղէմ, զՏէր. եւ օրհնեա
13 զԱստուած քո, Սիոն։ Զի զօրացոյց
զնիգս դրանց քոց, եւ օրհնեաց զորդիս
14 քո ի քեզ։ Ո եդ զսահմանս քո ի խա-
ղաղութիւն, պարարտութեամբ ցորե-
15 նոյ լցոյց զքեզ։ Առաքէ զբան իւր յեր-
կիր, վաղվաղ ընթանան պատգամք նո-
16 րա։ Դնէ զձիւն որպէս զասր, եւ զմէգ
17 որպէս փոշի ցանեաց։ Արկանէ զսառն
որպէս պատառս, առաջի ցրտոյ նորա

[1] Եբր. Տալ ճանաչել [2] Յեբր. պակասէ [3] Եբր. զամենայն կենդանի [4] Եբր. ողորմած

[5] Եբր. Է սաղմոսասել Աստուծոյ մերում. զի քաղցր և վայելուչ է [6] Եբր. Կանգնէ [7] Եբր. Տե՛ս ծանօթութիւն թիւ 7, Սաղմոս Թ.

18 ո՞ կարէ կալ ։ Առաքէ զբան իւր եւ հալէ
զնոսա, շնչեսցէ հողմք եւ գնասցեն
19 ջուրք ։ Պատմէ զբան իւր Յակոբայ,
զարդարութիւն եւ զիրաւունս Իսրա-
20 յէլի ։ Ոչ այսպէս արար ամենայն ազ-
գաց Տէր, եւ զդատաստանս [1]իւր ոչ
յայտնեաց նոցա ։՝՝

## ՍԱՂՄՈՍ ՃԽԸ

Ալէլուիա. [2]Անգեայ եւ Զաքարեայ ։՝՝

1 Օրհնեցէք զՏէր յերկնից, օրհնեցէք
2 զնա [3]ի բարձանց ։ Օրհնեցէք զնա
ամենայն հրեշտակք նորա, օրհնեցէք
3 զնա ամենայն զօրութիւնք նորա ։ Օրհ-
նեցէք զնա արեգակն եւ լուսին, օրհ-
նեցէք զնա ամենայն աստեղք [4]եւ լոյս՝՝։
4 Օրհնեցէք զնա երկինք երկնից, եւ ջուրք՝
5 որ ի վերոյ քան զերկինս ։ Օրհնեցէք
զանուն Տեառն, զի նա ասաց եւ ե-
ղեն, հրամայեաց եւ հաստատեցան ։
6 Կարգեաց զնոսա յաւիտեանս յաւիտե-
7 նից, սահման եդ եւ ոչ անցանեն ։ Օրհ-
նեցէք զՏէր յերկրէ վիշապք, եւ ա-
8 մենայն խորք, Հուր եւ կարկուտ, ձիւն
եւ սառն, հողմ եւ մրրիկ որ առնէք
9 զբան նորա, Լերինք եւ ամենայն բլուրք,
ծառք պտղաբերք եւ ամենայն մայրք,
10 Գազանք եւ ամենայն անասունք, սողունք
11 եւ ամենայն թռչունք թեւաւորք, Թա-
գաւորք երկրի եւ զօրք իւրեանց, իշ-
խանք եւ ամենայն դատաւորք երկրի,
12 Երիտասարդք եւ կուսանք, ծերք եւ
13 տղայք. Օրհնեցէք զանուն Տեառն.
բարձրացաւ անուն նորա միայն, խոս-
տովանութիւն նմա յերկինս եւ յերկրի ։
14 Բարձր առնէ Տէր զեղջեւր ժողովրդեան
իւրոյ, օրհնութիւն յամենայն սրբոց
նորա, յորդւոցն Իսրայէլի, ժողովուրդ
որ մերձ է առ [5]Տէր ։

## ՍԱՂՄՈՍ ՃԽԹ

Ալէլուիա ։

1 Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր, օրհ-
2 նութիւն նմա յեկեղեցիս սրբոց ։ Ուրախ
եղիցի Իսրայէլ յԱրարիչ իւր, որդիք
Սիոնի ցնծասցեն ի թագաւորն իւրեանց։
3 Օրհնեսցեն զանուն նորա օրհնութեամբ,
սաղմոսիւք եւ օրհնութեամբ սաղմոս
4 ասասցեն նմա։ Հաճի Տէր ընդ ժողովուրդ
իւր, եւ բարձր առնէ զհեզս ի փրկութեան։

[1] Եբր. նորա ոչ ծանեան նոքա ։ Ալէլուիա ։ [2] Յեբր. պակասէ [3] Եբր. ի բարձունս [4] Եբր. լուսոյ
[5] Եբր. նա, Ալէլուիա ։

5 Պարծեսցին սուրբքն փառօք, եւ
6 ցնծասցեն ի հանգիստս իւրեանց. Եւ
բարձր արասցեն զԱստուած բերանովք
իւրեանց. սուրք երկսայրիք են ի ձեռս
7 նոցա, Առնել հատուցումն ի հեթանո-
սաց, ի յանդիմանութիւն ամենայն ժո-
8 ղովրդոց, Կապել զթագաւորս նոցա
կապանօք, զզօրաւորս նոցա ձեռակա-
9 պօք երկաթեօք, Առնել ի նոսա զդա-
տաստանն գրեալ. փառք այս են ամենայն
սրբոց [6]նորա ։

## ՍԱՂՄՈՍ ՃԾ

Ալէլուիա ։

1 Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան նո-
րա, օրհնեցէք զնա ի հաստատութեան
2 զօրութեան նորա ։ Օրհնեցէք զնա ի
զօրութեան նորա, օրհնեցէք զնա [7]ի
3 բազում մեծութեան նորա ։ Օրհնեցէք
զնա ի ձայն [8]օրհնութեան, օրհնեցէք
զնա [9]սաղմոսիւք եւ օրհնութեամբ՝՝։
4 Օրհնեցէք զնա [10]ցնծութեամբ, գովեցէք
5 զնա [11]ուրախութեամբ ։ Օրհնեցէք զնա
[12]ի բանս քաղցունս, օրհնեցէք զնա ի
բարբառ լսելի. օրհնեցէք զնա ի ձայն
6 գոհութեան ։ Ամենայն հոգիք, օրհնե-
ցէք զՏէր ։՝՝

[2]Այս Սաղմոս ինքնագիր Դաւթի արտա-
քոյ թուոց. ի ժամանակի զի եղ նա
նահատակ ընդդէմ Գողիադու, առաջի
Սաւուղի ։

1 Փոքր էի ես յեղբարս իմ, եւ կրտսեր
ի տան հօր իմոյ. արածէի զխաշինս հօր
2 իմոյ ։ Ձեռք իմ արարին սաղմոսարան,
եւ մատունք իմ կազմեցին զործի օրհ-
3 նութեան ։ Իսկ արդ ո՞ պատմեսցէ զայս
Տեառն իմում. ինքն Տէր ամենայնի
4 լուիցէ զամենայն ։ Որ առաքեաց զհրեշ-
տակ իւր եւ ամբարձ զիս ի հօտէ խա-
շանց հօր իմոյ, եւ օծ զիս յօծումն իւ-
5 ղոյ իւրոյ ։ Եղբարք իմ գեղեցիկք եւ
մեծամեծք, եւ ոչ հաճեցաւ ընդ նոսա
6 Տէր ։ Ելի ես ընդ առաջ այլազգւոյն, եւ
7 նզովեցի զկուռս նոցա ։ Հանի զսուսերն
ի նմանէ եւ հատի զգլուխ նորին, եւ
բարձի զնախատինս յորդւոցն Իսրայէլի՝՝

[6] Եբր. նորա ։ Ալէլուիա ։ [7] Եբր. ըստ բազում [8] Եբր. փողոյ [9] Եբր. ի տաւիղ և ի քնար [10] Եբր. թմբկաւ եւ պարուք [11] Եբր. տաւնաղեաւ եւ սրնգաւ [12] Եբր. ի բարբառ ծնծղայից. օրհնեցէք զնա ծնծղայիւք ցնծութեան ։ (6) Օրհնեցէք զՏէր ամենայն շնչաւորք ։ Ալէլուիա ։

# ԳԼՈՒԽՔ ԱՌԱՋՆՈՑ ԲԱՆԻ ԱՌԱԿԱՑՆ

# ԱՌԱԿՔ ՍՈՂՈՄՈՆԻ

## ՈՐԴՒՈՅ ԴԱՒԹԻ ԹԱԳԱՒՈՐԻ ԻՍՐԱՅԵԼԻ

### ԳԼՈՒԽ Ա

2 ՃԱՆԱՉԵԼ զիմաստութիւն եւ
զխրատ, իմանալ զբանս հանճարոյ,
3 Ընդունել [1]զդարձուածս բանից, ի միտ
առնուլ զարդարութիւն ճշմարիտ, եւ
4 ուղղել զիրաւունս: Զի տացէ անմեղաց
զխորագիտութիւն, մանկանց տղայոց
5 զմիտս եւ զհանճար. Որոց իբրեւ լուիցէ
իմաստունն՝ իմաստնագոյն լիցի, իսկ որ
հանճարեղն իցէ [2]զառաջնորդութիւն
6 ստասցի, Ի միտ առցէ զառակս եւ
զբանս խորինս, զճառս իմաստնոց եւ
7 զառակս նոցա: Սկիզբն իմաստութեան
երկեւղ Տեառն, [3]հանճար բարի ամենե-
ցուն որ առնեն զնա. պաշտօն բարի առ
Աստուած՝ սկիզբն զգօնութեան: զի-
մաստութիւն եւ զխրատ ամպարիշտք
անգոսնեն:
8 Լուր, որդեակ, խրատու հօր քո, եւ
9 մի՛ մերժեր զօրէնս մօր քո. Զի պսակ
շնորհաց ընկալցի գլուխ քո, եւ ման-
եակ ոսկի [4]ի պարանոցի քում:
10 Որդեակ, մի՛ խաբեսցեն զքեզ արք ամ-
պարիշտք, եւ մի՛ ախորժեսցես՝ եթէ
11 կոչեսցեն զքեզ Եւ ասիցեն, Եկ ընդ
մեզ՝ կցորդ լեր արեան, ծածկեսցուք
յերկրի զայր արդար ի տարապարտուց.
12 Կլցուք զնա կենդանւոյն իբրեւ դժոխք,
եւ [5]բարձցուք զյիշատակս նորա յերկրէ:
13 Եւ զստացուածս նորա զպատուականս ըմ-
բռնեսցուք, լցցուք զտունս մեր ա-
14 ւարաւ. Զվիճակ քո արկ ընդ մեզ,
քսակ հասարակաց ստասցուք ամենեք-
եան, [3]գանձարան ի միասին եղիցի մեր:
15 Որդեակ, մի՛ երթար ճանապարհ ընդ
նոսա, խոտորեա զոտն քո ի շաւղաց
16 նոցա: Զի ոտք նոցա ի չարիս ընթա-
նան, եւ երագունք են ի հեղուլ զա-
17 րիւն: Զի [3]ոչ եթէ՝ տարապարտուց ձգեն
18 զործիս [6]թռչնոց. Զի նոքին իսկ [7]որ
սպանութեանն հաղորդ են՝ գանձեն ան-
ձանց իւրեանց զչարիս. [8]կործանումն
19 արանց անօրինաց չար է: Այս՝ ճանա-
պարհք են ամենեցուն որ [9]գործեն զա-
նօրէնս, զի ամպարշտութեամբն զան-
ձինս իւրեանց սատակեն:
20 Իմաստութիւն յելս ճանապարհաց
[10]գովի, եւ ի հրապարակս համարձակու-
21 թիւն բերէ. Եւ ի գլուխս պարսպաց
քարոզի, եւ առ դրունս հզօրաց յա-
ճախէ, եւ ի դրունս քաղաքաց համար-
22 ձակեալ խօսի: Ցորքան ժամանակս ան-
մեղք իցեն զհետ արդարութեան, մի՛
ամաչեսցեն. իսկ անմիտք ցանկացօղք
թշնամանաց՝ ամպարշտեալք ատեցին զի-
մաստութիւն, եւ դատապարտք եղեն
23 յանդիմանութեանց: Ահաւասիկ առաջի
առնեմ ձեզ պնոգւոյ իմոյ զպատգամս,
24 ուսուցից զբանս իմ ձեզ: Քանզի կո-
չէի, եւ ոչ լսէիք. յերկարէի [11]զբանս
25 իմ, եւ ոչ անսայիք. Այլ ապախտ առնէիք
զխորհուրդս իմ, եւ յանդիմանութեանց
26 իմոց ոչ անսայիք: Այսուհետեւ ես ծի-
ծաղեցայց զկորստեամբ ձերով, եւ
ուրախ եղէց՝ յորժամ գայցէ [12]ձեզ նե-
27 ղութիւն եւ պաշարումն: Եւ յորժամ
հասանիցէ ձեզ յանկարծակի խռովու-
թիւն, եւ կործանումն ի նմանութիւն
մրրկի գայցէ. կամ յորժամ հասանիցէ

---

[1] Եբր. զխրատ իմաստութեան, զարդարութիւն եւ զիրաւունս եւ զուղղութիւն [2] Եբր. զգօնութիւն [3] Եբր. զոյնէ [4] Եբր. եղիցի ի պարանոցի [5] Եբր. ողջոյն՝ իբրեւ զորս իջանեն ի գուբ:

[6] Եբր. ակն յանդիման ամենայն թռչնոց [7] Եբր. արեան իւրեանց դարանին, [8] Եբր. (19) Այսպէս [9] Եբր. ագահեն զագահութիւն. զանձն տեառն իւրոյ կալցի: [10] Եբր. գոչէ. ի հրապարակս տայ զձայն իւր. (21) Ի գլուխս փողոցաց աղաղակէ, ի մուտս դրանց, ի քաղաքի զբանս իւր խօսի: (22) Մինչեւ ցե՞րբ, անմիտք, սիրիցէք զանմտութիւն, եւ որ ծաղրն առնեն՝ զուարճասցին ծաղու, եւ յիմարք ատեսցեն զգիտութիւն: (23) Դարձարուք ի յանդիմանութիւն իմ. ահաւասիկ հեղից ի վերայ ձեր զհոգի իմ [11] Եբր. զձեռս [12] Եբր. երկեւղ ձեր

28 Ձեզ սատակումն. Իցէ զի կարդայցէք
առ իս, և ես ոչ լսիցեմ ձեզ. խնդրես-
29 ցեն զիս [1]չարք, և ոչ գտանիցեն. Զի
ատեցին զիմաստութիւն, և զերկիւղ
30 Տեառն ոչ խնդրեցին. Եւ ոչ կամէին
անսալ խորհրդոց իմոց, և արհամարհ-
31 հեցին զյանդիմանութիւնս իմ։ Այսուհե-
տև կերիցեն զպտուղս ճանապարհաց
իւրեանց, և [2]իւրեանց ամպարշտու-
32 թեամբն յագեսցին։ Փոխանակ զի զրը-
կէին զտղայս՝ կոտորեսցին, և կշտամ-
բութիւն զամպարիշտս սատակեսցէ՚՚
33 Իսկ որ ինձ լուէ՝ բնակեսցէ յուսով, և
[3]դադարեսցէ աներկեւղ յամենայն չա-
րութենէ՚՚։

## ԳԼ. Բ

1 Որդեակ, եթէ ընկալեալ զպատգամս
պատուիրանի իմոյ ծածկեսցես յանձին
2 քում, Լուիցէ իմաստութեան ունկն
քո. և առակեսցես զսիրտ քո ի հան-
ճար, [1]և աւանդեսցես զնա որդւոյ քում
3 ի խրատ՚՚։ Զի եթէ զիմաստութիւն կո-
չեսցես ի քեզ, և հանճարոյ տացես
4 զձայն քո, Եւ եթէ խնդրեսցես զնա
իբրև զարծաթ ընտիր, և իբրև զգանձս
5 քննեսցես զնա, Յայնժամ ի միտ առ-
ցես զերկիւղ Տեառն, և զգիտութիւն
6 Աստուծոյ գտցես։ Զի Տէր տայ զիմաս-
տութիւն, և [4]յերեսաց նորա գիտու-
7 թիւն և հանճար։ Եւ գանձէ ուղղոց
զփրկութիւն, [5]վերակացու լինի գնացից
8 նոցա՚՚, Պահել զճանապարհս իրաւանց,
և զճանապարհս երկիւղածաց իւրոց
9 ամրացուսցէ։ Յայնժամ ի միտ առցես
զարդարութիւն և զիրաւունս, և [1]ուղ-
ղեսցես զամենայն շաւիղս բարութեան։
10 Զի եթէ եկեսցէ իմաստութիւն ի
միտս քո, և զհանճար անձին քում
11 բարի համարեսցիս լինել։ [6]Խորհուրդք
բարեաց զգուշասցին զքեւ՝ և միտք
12 սուրբ պահեսցեն՚՚ զքեզ։ Զի ապրեցու-
ցեն զքեզ ի ճանապարհէ չարէ, և յառնէ
որ խօսիցի և ոչ ինչ հաւատարիմս։
13 Ո՛հ որոց թողեալ իցէ զճանապարհս ու-
ղիղս՝ գնալ ի ճանապարհս խաւարինս,
14 Որ ուրախ լինիցին ընդ չարիս, և
խնդայցեն ընդ խոտորումն չարութեան.
15 Որոց թիւր իցեն ճանապարհք իւրեանց,
16 և կամակոր շաւիղք նոցա, Հեռի առ-
նել զքեզ [7]յուղիղ ճանապարհէ, և օտա-
րացուցանել յարդար խորհրդոց. որդ-
եակ իմ, մի՛ հասցեն քեզ խորհուրդք
17 չարք. Որոց թողեալ իցէ զուսումն ման-
կութեան՚՚, և մոռացեալ զուխտն աս-
18 տուածեղէն. Զի եդ մերձ ի մահ զտուն
իւր, և [1]մօտ ի դժոխս՚՚ ընդ երկրա-
19 ծինս զշաւիղս իւր։ Ամենեքեան որ
գնան ընդ նա՝ ոչ դարձցին, [1]այլ և ի
զղջումն ևս եկեսցեն.՚՚ և ոչ ժամա-
նեսցեն ի ճանապարհս [8]ուղիղս, և ոչ
հասցեն ի տարեկանս կենդանութեան։
20 Զի եթէ գնացեալ էր ի ճանապարհս
բարիս, գտանէին արդեւք զշաւիղս ար-
դարութեան զդիւրինս։ Քաղցրացեալք՝
եղիցին բնակիչք երկրի, անմեղք մնաս-
21 ցեն ի նմա։՚՚ Զի ուղիղք բնակեսցեն
յերկրի, և անարատք մնասցեն ի նմա
22 [9]Ճանապարհք ամպարշտաց՚՚ կորիցեն
յերկրէ, և անօրէնք մերժեսցին ի
նմանէ։

## ԳԼ. Գ

1 Որդեակ, զօրէնս իմ մի՛ մոռանար, և
2 զբանս իմ պահեսցես ի սրտի քում, Զի
ընդերկարութիւն կենաց և ամք կեն-
դանութեան և խաղաղութիւն յաւել-
3 ցին քեզ։ Ողորմութիւն և հաւատք ի
քէն մի՛ պակասեսցեն. արկ զնոսա ընդ
պարանոց քո, և գրեա զնոսա յընդար-
4 ձակութիւն սրտի քո. Եւ գտցես շնորհս,
և [10]խորհեսցիս զբարիս առաջի Տեառն՚՚
և մարդկան։
5 Լեր յուսացեալ ի Տէր յամենայն սրտէ
քումմէ, և յիմաստութիւն քո մի՛
6 հպարտանար։ Յամենայն ճանապարհս
քո ծանիր զնա, զի ուղիղ արասցէ զճա-
նապարհս քո, [1]և ոտն քո մի՛ գայթակ-
7 ղեսցի՚՚ Մի՛ լինիր իմաստուն յաչս ան-
ձին քո, այլ երկիր ի Տեառնէ և խո-
8 տորեա յամենայն չարութենէ։ Ապա
բժշկութիւն եղիցի մարմնոյ քում, և
9 զարման ոսկերաց քոց։ Պատուեա զՏէր

[1] Եբր. գտանէ [2] Եբր. ի խորհրդոց իւրեանց յագեսցին։ (32) Զի խոտորումն անմտաց սատակեսցէ զնոսա, և անհոգութիւն յիմարաց կորուսցէ զնոսա։ [3] Եբր. եղիցի զերծ յերկիւղէ չարեաց [4] Եբր. ի բերանոյ [5] Եբր. վահան որոց գնան ամբծութեամբ [6] Եբր. Զգօնութիւն զգուշասցի զքեւ և հանճար պահեսցէ

[7] Եբր. ի կնոջէ օտարէ. յօտարէ՝ որ ամոքէ զբանս իւր։ (17) Որոյ թողեալ իցէ զընկեր մանկութեան իւրոյ [8] Եբր. կենաց։ (20) Զի գնասցես զճանապարհս բարեաց, և պահեսցես զշաւիղս արդարոց։ [9] Եբր. Իսկ ամպարիշտք [10] Եբր. Հանճար բարի յաչս Աստուծոյ

[1]ի քոց արդար վաստակոց, եւ հան նմա
պտուղ ի քոց արդարութեան արմտեաց։
10 Զի լցցին շտեմարանք քո լիութեամբ
[2]ցորենոյ, եւ գինեաւ հնձանք քո ա-
ռաւել եւս բղխեսցեն։
11 Որդեակ, մի՛ լքանիր ի խրատու
Տեառն, եւ մի՛ լուծանիր յանդիմանեալ
12 ի նմանէ։ Զի զոր սիրէ Տէր՝ խրատէ,
[3]տանջէ զամենայն որդի զոր ընդունի։
13 Երանեալ է այր որ եգիտ զիմաստու-
թիւն, եւ մահկանացու՝ որ ետես զհան-
14 ճար։ Զի լաւ է զվաճառն զայն գա-
նել՝ քան զգանձս ոսկւոյ եւ արծաթոյ։
15 Պատուականագոյն է քան զականս պա-
տուականս, [4]եւ ոչ ինչ է չար որ հա-
կառակ կայցէ նմա. յայտնի է ամենե-
ցուն որ մերձին ի նա, եւ ամենայն
ինչ որ պատուական է՝ չարժէ զնա։
16 Զի երկայն աւուրք [2]եւ ամք կենաց
յաջմէ իւրմէ, եւ յահեկէ իւրմէ փառք
եւ մեծութիւն։ [2]Ի բերանոյ նորա ելանէ
արդարութիւն, զօրէնս եւ զողորմու-
17 թիւն ի լեզուի իւրում կրէ։ Ճանա-
պարհք նորա ճանապարհք բարեաց, եւ
ամենայն շաւիղք նորա խաղաղութեամբ։
18 Փայտ կենաց է ամենեցուն որ պատըս-
պարին ի նա, եւ որ յենուն ի նա [5]իբրեւ
19 ի Տէր հաստատութեամբ։ Աստուած
իմաստութեամբ հիմունս արկ երկրի,
20 պատրաստեաց զերկինս խորհրդով. Հան-
ճարով իւրով զանդունդս պատառեաց,
եւ ամպք հոսեցին զանձրեւ։
21 Որդեակ, մի՛ [6]լուծանիցիս. պահեա
զխորհուրդս իմ՝ եւ զիմաստութիւն,
22 Զի կեցցէ անձն քո, եւ շնորհք իցեն ի
վերայ պարանոցի քո. [2]եղիցի բժշկու-
թիւն մարմնոյ քում, եւ զարման ոս-
23 կերաց քոց։ Զի գնասցես յուսով խա-
ղաղութեան յամենայն ճանապարհս քո,
24 եւ ոտն քո մի՛ գայթակղեսցի։ Զի եթէ
նստիցես՝ աներկեւղ իցես, եւ եթէ
25 ննջեսցես՝ քաղցր ի քուն լիցիս։ Ոչ եր-
կիցես ի զարհուրանաց ի վերայ հասե-
լոց եւ յարշաւանաց ամպարշտաց ի վե-
26 րայ եկելոց։ Զի Տէր եղիցի [7]ի վերայ
ամենայն ճանապարհաց քոց, եւ հաս-
տատեսցէ զոտն քո՝ զի մի՛ գայթակղեսցի։

[1]Ոմանք. ի գործոց քոց եւ յերախայրեաց մրգոց քոց. [2]Ոմանք. [illegible] [3]Ոմանք. որպէս հայր յակն առնու զորդի [4]Ոմանք. եւ ամենայն հաճոյք քո ոչ հաւասարեսցեն նմա [5]Ոմանք. երանելիք են։ (19) Տէր [6]Ոմանք. հեռասցին աչք յաչաց քոց. պահեա զգօնութիւն [7]Ոմանք. վստահութիւն քո

27 Մի՛ յապաղեր բարի առնել կարօտե-
լոյ, յորժամ ձեռնհաս իցես օգնել նմա։
28 Մի՛ [8]ասիցես թէ Երթ եւ եկեսջիր, եւ
վաղիւ տաց, [9]զի կարող եւս իցես բա-
րի առնել. քանզի ոչ գիտես զինչ վա-
29 ղիւն ծնանիցի քեզ։ Մի՛ նիւթեր բա-
րեկամի քում չարիս՝ որ յեցեալ եւ յու-
30 սացեալ իցէ ի քեզ։ Մի՛ թշնամանաւէր
լինիր մարդոյ ի տարապարտուց, [10]զի
31 մի՛ չար ինչ գործիցէ քեզ։ Մի՛ ստա-
նար նախատինս յարանց չարաց, եւ մի՛
նախանձիր ընդ ճանապարհս նոցա։
32 Քանզի պիղծ է առաջի Տեառն ամենայն
անօրէն, եւ ընդ [11]արդարս ոչ հաղորդի։
33 Անէծք Տեառն ի տունս ամպարշտաց,
34 յարկք արդարոց օրհնին։ [12]Տէր ամ-
բարտաւանից հակառակ կայ, տայ շնորհս
35 խոնարհաց։ Զփառս իմաստունք ժա-
ռանգեսցեն, իսկ [13]ամպարիշտք բարձ-
րացուցին զանարգանս։

ԳԼ. Դ

1 Լուարուք, մանկունք, զխրատ հօր,
եւ անսայէք ճանաչել զիմաստութիւն.
2 Զի [14]պարգեւս բարեաց պարգեւեցից
3 ձեզ. զօրէնս իմ մի՛ թողուք. Զի որդի
եղեալ եմ [15]եւ ես հպատակ հօր իմոյ,
4 եւ սիրեցեալ յաչս մօր իմոյ, [16]Որք ու-
սուցանէին զիս եւ ասէին, Հաստա-
տեսցի բան [17]մեր ի սրտի քում. պահեա
5 զպատուիրանս իմ եւ կեաց։ Ստացիր
զիմաստութիւն, ստացիր զհանճար. եւ
մի՛ մոռանար, [2]եւ մի՛ արհամարհեր
զպատգամս բերանոյ իմոյ, եւ մի՛ խո-
6 տորիր ի բանից շրթանց իմոց։ Մի՛ թո-
ղուր զնա, եւ պատսպարեսցէ զքեզ.
7 սիրեա զնա, եւ պահեսցէ զքեզ։ Սկիզբն
զգօնութեան՝ ստացիր զիմաստութիւն,
եւ յամենայն [18]ճանապարհս քո ստացիր
8 զհանճար։ [19]Ճուրջ փակեա զնովաւ, եւ
բարձրացուսցէ զքեզ. [20]մեծարեա զնա՝
9 զի գիրկս արկցէ զքեւ։ Զի տացէ գլխոյ

[8]Ոմանք. ասիցես ընկեր քո, [9]Ոմանք. մինչ է քո [10]Ոմանք. եթէ չար ինչ չիցէ գործեալ քեզ։ (31) Մի՛ նախանձիր ընդ այր բռնաւոր, եւ մի՛ ընտրեսցես զամենայն ճանապարհս նորա։ [11]Ոմանք. ուղիղս ընդելութիւն նորա [12]Ոմանք. Ապաքէն զորս ծաղր առնիցեն՝ ծաղր առնէ. իսկ տայ [13]Ոմանք բարձրանայն յիմարաց անարգութիւն է [14]Ոմանք. խրատ բարի տամ [15]Ոմանք. հօր իմոյ, սիրելի եւ միամօր [16]Ոմանք. Ուսուցանէր նա զիս եւ ասէր, [17]Ոմանք. իմ [18]Ոմանք. ստացուածս [19]Ոմանք. Մեծարեա զնա [20]Ոմանք. փառաւորեսցէ զքեզ, եթէ գիրկս արկցես նմա։

քում պսակ շնորհաց. եւ պսակաւ
փափկութեան վերակացու լիցի քեզ։
10 Լուր, որդեակ, եւ ընկալ զբանս իմ,
եւ բազմասցին ամք կենաց քոց. [1]եւ
յաճախեսցին ճանապարհք կենաց քոց՚՚
11 Զճանապարհս իմաստութեան ուսուցա-
նեմ քեզ, խելամուտ առնեմ զքեզ ու-
12 ղիղ շաւղաց։ Զի եթէ գնայցես՝ ոչ խա-
փանեսցին գնացք քո, եւ եթէ ընթա-
13 նայցես՝ ոչ [2]վաստակեսցես։ Բուռն հար
զխրատուէ իմմէ՝ եւ մի՛ թողուցուս,
այլ պահեա զնա անձին քում ի կեանս։
14 Ի ճանապարհս ամպարշտաց մի՛ եր-
թայցես, եւ մի՛ նախանձիցիս ընդ ճա-
15 նապարհս անօրինաց. Եւ ի տեղւոջ ուր
բնակիցեն՝ ընդ այն մի՛ անցանիցես,
խոտորեա ի նոցանէ, եւ խորշեաց ան-
16 տի։ Զի ոչ ննջեն, եթէ ոչ չար գործի-
ցեն. բարձեալ է քուն նոցա՝ [3]եւ ոչ
17 ննջեն՚՚. Որք ուտեն զկերակուրս ամ-
պարշտութեան, եւ զգինեաւ անօրէնու-
18 թեան արբենան։ Ճանապարհք արդա-
րոց իբրեւ զլոյս ծագեն, առաջնորդեն
եւ լուսաւորեն, մինչեւ տիւն լուսաւո-
19 րեսցէ։ Ճանապարհք ամպարշտաց խա-
ւարինք, եւ ոչ գիտեն զիարդ գայթակղին։
20 Որդեակ, իմոյ իմաստութեան անսա,
21 եւ իմոց բանից մատո զունկն քո. [4]Զի
մի՛ պակասեսցին աղբերք քո՚՚. պահեա
22 զնոսա ի սրտի քում. Քանզի կեանք են
որոց գտանեն զնոսա, եւ ամենայն մսեղ-
23 ւոյ՝ բժշկութիւն։ Ամենայն պահպանու-
թեամբ պահեա զսիրտ քո, զի ի սոցա-
24 նէ են ելք կենաց։ Ի բաց արա ի քէն
զբերան կամակոր, եւ զշրթունս անի-
25 րաւս մերժեա իքէն։ Աչք քո ուղիղ
հայեսցին, եւ արտեւանունք քո արդար
26 ակնարկեսցեն։ Զշաւիղս ուղիղս արա-
ցես ոտից քոց, եւ զճանապարհս քո
27 ուղղեսցես։ Մի՛ խոտորիցիս յաջ եւ մի՛
յահեակ, դարձո զոտն քո ի ճանապար-
հէ չարէ։ [1]Զի զճանապարհս որ յաջմէ
են՝ գիտէ Աստուած, թիւր են ճանա-
պարհք՝ որ ի ձախմէ են. այլ ինքն ուղիղ
արասցէ զշաւիղս քո, եւ զճանապարհս
քո խաղաղութեամբ յառաջեցուսցէ։՚՚

ԳԼ. Ե

1 Որդեակ, իմոյ իմաստութեան անսա,
2 եւ իմոց բանից մատո զունկն քո, Զի

[1] ՑՆբր. պ—կ—ե [2] Նբր. գայթակղեսցիս [3] Նբր. եթէ ոչ կորուսցեն զոք [4] Նբր. Մի՛ հեռասցին յաչաց քոց

պահեսցես [5]զխորհուրդս բարեաց. զի-
մաստութիւն շրթանց իմոց պատուի-
3 րեմ քեզ. մի՛ հայիր ընդ կին չար՚՚. Զի
մեղր կաթէ ի շրթանց կնոջ պոռնկի,
[6]որ առ ժամանակ մի պարարէ զքիմս
4 քո՚՚, Բայց յետոյ դառնագոյն եւս գտանի
քան զլեղի, եւ սրեալ առաւել քան
5 զսուր երկսայրի։ [7]Վասն զի ոտք անզգա-
մի իջուցանեն զմերձաւորս նորա մա-
հու հանդերձ ի դժոխս, եւ հետք նորա
6 չեն հաստատուն։ Զի ի ճանապարհս կե-
նաց ոչ գնան, շեղխ են ճանապարհք
7 նորա՝ եւ ոչ յայտնիք՚՚։ Արդ, որդեակ,
լուր ինձ, եւ մի՛ ապախտ առներ զբանս
8 իմ։ Հեռի արա ի նմանէ զճանապարհս
քո, եւ մի՛ մերձենար ի դրունս տան
9 նորա։ Զի մի՛ մատնեսցես օտարաց
[8]զկեանս քո, եւ [9]զստացուածս քո ա-
10 նողորմից։ Զի մի՛ լցցին օտարք ի զօ-
րութենէ քումմէ, եւ մի՛ վաստակք քո
11 ի տունս այլոց մտանիցեն։ Եւ զղջա-
ցիս յետոյ՝ յորժամ մաշիցին անդամք
12 մարմնոյ քո. Եւ ասիցես թէ Զիարդ
ատեցի զխրատ, եւ ի յանդիմանութեանց
13 խոտորեցաւ սիրտ իմ։ Ոչ լսէի ձայնի
խրատողի իմոյ, եւ ուսուցչի իմոյ ոչ
14 մատուցանէի զունկն իմ։ Սակաւիկ մեւս
եւս եւ եղեալ էի ի մէջ ամենայն չա-
րեաց, ի մէջ եկեղեցւոյ եւ ժողովրդեան։
15 Արբ ջուր ի քոց ամանոց, եւ ի քոց
16 ջրհորոց աղբերաց։ [10]Բղխեսցեն քեզ ջուրք
քո ի քումմէ աղբերէ, եւ ի քո հրապա-
17 րակս գնասցեն ջուրք քո՚՚ Եղիցին քեզ
միայնոյ լինել, եւ մի՛ ոք օտար հա-
18 ղորդեսցէ քեզ։ Աղբեւր ջրոյ քո ե-
ղիցի [11]քեզ առանձինն՚՚, եւ ուրախ լի-
19 նիջիր ընդ կնոջ մանկութեան քո։ Եղն
սիրոյ եւ [12]յաւանակ քոց շնորհաց խօսեսցի
ընդ քեզ, եւ ի քո իմաստութիւն համա-
րեսցի եւ ընդ քեզ եղիցի յամենայն ժամ.
զի եթէ՚՚ ընորա սիրովն գայցես՝ [13]բազ-
20 մապատիկ եղիցես՚՚։ Մի՛ յաճախեր առ
օտարս, եւ մի՛ փարիր ի գիրկս՝ որ ոչ

[5] Նբր. զգօնութիւն, և գիտութեան զգուշասցին շրթունք քո [6] Նբր. եւ կակուղ են քան զձէթ քիմք նորա [7] Նբր. Ոտք նորա իջանեն ի մահ. ի դժոխս հետք նորա ժամանեն։ (6) Զի մի՛ կշռեսցես զճանապարհ կենաց, չեն հաստատուն ճանապարհք նորա եւ չիցես կարող գիտել զնոսա [8] Նբր. զփառս [9] Նբր. զամս [10] Նբր. Հոսեսցեն, կամ, հոսեսցե՞ն քո արտաքս, որպէս վտակք ջուրց ի հրապարակս։ [11] Նբր. օրհնեալ [12] Նբր. այծեամն շնորհաց, ատինք նորա յագեցուսցեն զքեզ յամենայն ժամ. [13] Նբր. հանապազ

21 քո իցեն ։ Զի առաջի աչաց [1]Աստուծոյ
են ճանապարհք առն , եւ յամենայն շա-
22 ւիղս նորա դիտէ ։ Անօրէնութիւնք որ-
սան զայր , եւ ի պարանս մեղաց իւրոց
23 շաղի իւրաքանչիւր ոք ։ Մեռանի նա
[2]ընդ անխրատս" վասն անխրատութեան,
եւ ի բազմութենէ [3]կենաց իւրոց զրկե-
ցաւ, եւ կորեաւ վասն անզգամութեան" ։

## Գլ. Զ

1 Որդեակ , եթէ լինիցիս երաշխաւոր բա-
րեկամի քում , մատնեսցես զձեռն քո
2 [4]թշնամւոյ . Զի որոգայթ բուռն են առն
շրթունք իւր , եւ ըմբռնի բանիւ բե-
3 րանոյ իւրոյ ։ Արդ արա , որդեակ , զոր
ինչ ես պատուիրեմ քեզ՝ եւ կեցցես .
զի անկար ի ձեռս [2]չարաց վասն" բա-
րեկամի քո . [5]արդ պնդեա եւ մի՛ լքա-
նիր , յորդորեա եւ զբարեկամն զոր ա-
4 ռեր յերաշխի" ։ Մի՛ տար քուն աչաց ,
5 եւ մի՛ նինջ արտեւանաց քոց . Զի ապ-
րեսցիս որպէս այծեամն ի հազրից , եւ
իբրեւ զհաւ ի ծուղակաց ։
6 Երթ առ մրջիւնն , ո՛վ վատ , եւ նա-
խանձեաց ընդ ճանապարհս նորա , եւ
7 լեր իմաստնագոյն [2]նորա քան զնա" ։ Զի
նորա ոչ գոյ [6]հողագործութիւն եւ ոչ
8 հարկապիր , եւ ոչ ընդ տերամբք է , եւ
պատրաստէ ամարանի զկերակուր , եւ
բազում համբարս դնէ ի հունձս ։ [2]Կամ
երթ առ մեղուն եւ ուսիր զիարդ գոր-
ծօն է , եւ գործ նորա որպէս պարկեշ-
տութեամբ գործի . զորոյ զվաստակն
թագաւորք եւ անանկք ի բժշկութիւն
մատուցանեն . ցանկալի է ամենեցուն
եւ մեծարոյ . զի թէպէտ եւ տկար է
զօրութեամբ , պատուեալ զիմաստու-
9 թիւն՝ եւ յարգեցաւ ։" Մինչեւ յե՞րբ
յորանայսեալ կաս , ո՛վ վատ , կամ ե՞րբ ի
10 քնոյ զարթիցես ։ Փոքր մի ննջիցես ,
[2]փոքր մի նստիցես ," փոքր մի նիրհի-
ցես , փոքր մի հանգուցանիցես զձեռն
11 քո ի վերայ լանջաց [7]քոց , Ապա այնու-
հետեւ հասանիցէ ի վերայ քո իբրեւ
[2]զչար ուղեւոր անանկութիւն , եւ կա-
րօտութիւն իբրեւ [8]զժիր սուրհանդակ ։
Ապա եթէ անդանդաղ լինիցիս , հասա-
նիցէ իբրեւ զաղբիւր ամառն քո , եւ
կարօտութիւն իբրեւ այր մի չար ինք-
նահալած լինիցի ։"
12 Այր անօրէն եւ անզգամ գնայ զճանա-
13 պարհս թիւրս . Քանզի նոյն ինքն ակ-
նարկէ ակամբ , եւ նշանակէ ոտամբ ,
եւ ուսուցանէ նշանացի մատամբք ։
14 Սիրտ խոտորեալ նիւթէ զչարիս . յամե-
նայն ժամանակի [9]այնպիսին խռովու-
15 թիւնս առնէ քաղաքի" ։ Եւ վասն այնորիկ
յանկարծակի հասցէ նմա կորուստ իւր ,
հատումն եւ մաշումն առանց բժշկութեան ։
16 [10]Զի խնդայ ընդ ամենայն զոր ատեայ
Տէր , եւ խորտակի վասն պղծութեան
17 անձին իւրոյ." Աչք թշնամանողի , լե-
զու անիրաւ , ձեռք որ հեղուն զարիւն
18 արդար , Սիրտ որ նիւթէ զխորհուրդս
չարս , եւ ոտք որ փութան գործել զչա-
19 րիս՝ [2]սատակեսցին ։ Բորբոքէ զստու-
թիւն վկայ անիրաւ , եւ արկանէ զրգռու-
թիւն ի մէջ եղբարց ։
20 Որդեակ , պահեա զօրէնս հօր քո , եւ
21 մի՛ մերժեր զխրատ մօր քո ։ Ընկալ զնո-
սա յանձին [2]եւ ի գլուխ" քո հանապազ ,
եւ արկ իբրեւ զմանեակ ի պարանոց քո ։
22 Յորժամ գնասցես՝ [11]ընդ քեզ տարջիր ,
եւ ընդ քեզ եղիցի ." յորժամ ննջիցես՝
պահեսցէ զքեզ , եւ յորժամ յառնիցես՝
23 խօսակից լիցէ քեզ ։ Զի ճրագ է պա-
տուիրան [12]օրինացն, լոյս" եւ ճանապարհ
կենաց՝ յանդիմանութիւն եւ խրատ ,
24 Պահել զքեզ [13]յառնակին կնոջէ , եւ ի
25 չարախօսութենէ" օտար լեզուի ։ Որ-
դեակ , մի՛ յաղթեսցէ քեզ ցանկութիւն
գեղոյ , [2]եւ մի՛ ըմբռնեսցիս աչօք քովք ,"
եւ մի՛ յափշտակիցիս արտեւանամբք
26 նորա ։ Զի [14]զինք կնոջ պոռնկի՝ որչափ"
նկանակի միոյ հացի . քանզի կին չար՝
զարանց պատուականաց զհոգիս որսայ ։
27 Ծրարիցէ՞ ոք հուր ի գոգ, եւ զհանդերձն
28 ոչ այրիցէ . Կամ գնայցէ՞ ոք ի վերայ
կայծականց հրոյ, եւ զոտս իւր ոչ խար-
29 շիցէ ։ Նոյնպէս եւ որ մտանէ առ առ-
նակին՝ [2]առանց պատժի ոչ լիցի , եւ"
ոչ արդարասցի ամենայն որ մերձենայ
30 առ նա ։ [15]Ոչ ինչ են զարմանք եթէ
ըմբռնեսցի ոք ի գողութեան ." գողա-

---

[1]Եբր. Տեառն [2]Եբր. պակաս [3]Եբր. անմտութեան իւրոյ մոլորեսցի [4]Եբր. օտարի [5]Եբր. երթ, խոնարհեաց, աղաչեա զբարեկամ քո [6]Եբր. իշխան [7]Եբր. քոյ ի ննջել [8]Եբր. զայր սպառազէն ։

[9]Եբր. հնարէ չարիս, յարուցանէ կռիւս [10]Եբր. Վեց են զորս ատեայ Տէր, եւ եօթն՝ գարշանք անձին նորա. [11]Եբր. առաջնորդեսցէ քեզ [12]Եբր. եւ օրէնք՝ լոյս, [13]Եբր. ի կնոջէ չարէ, եւ ի փաղաքշանաց [14]Եբր. յաղագս կնոջ պոռնկի՝ խորտիկ հացի [15]Եբր. Ոչ քամահեն զգող որ

նայ զի լցուսցէ զանձն իւր քաղ-
31 ցեալ. Ապա եթէ ըմբռնեսցի, եւթնպա-
տիկ տուժեսցի, եւ զամենայն ինչս իւր
32 [1]տուեալ՝ ապրեցուսցանէ զանձն"։ Իսկ
որ շնայ [2]առ պակասութեան մտաց",
33 կորուստ անձին իւրում ստանայ. Ցաւս
եւ անարգանս կրէ, եւ նախատինք նո-
34 րա մի՛ կորիցեն յաւիտեան։ Լի է նա-
խանձու սրտմտութիւն առն նորա, եւ
35 ոչ խնայեսցէ յաւուր [3]դատաստանի. Ոչ
փոխանակեսցէ եւ ոչ ընդ միոյ իրիք
փրկանաց զթշնամութիւն, եւ ոչ վճա-
րիցի" բազում կաշառօք։

## Գլ. Է

1 Որդեակ, պահեա զբանս իմ, եւ զպա-
տուիրանս իմ ծածկեա յանձին քում։
[4]Որդեակ, պատուեա զՏէր եւ զօրա-
ցիր, եւ բաց ի նմանէ յայլ ումեքէ մի՛
2 երկնչիր։ Որդեակ," պահեա զպատուի-
րանս իմ եւ կեցցես, եւ զբանս իմ իբ-
3 րեւ զբիբ աչաց։ Ցեա զնոսա ընդ մա-
տունս քո, եւ գրեա յընդարձակութիւն
4 սրտի քո։ Ասա զիմաստութիւն քոյր
քեզ լինել, եւ զհանճար ա՛րա քեզ ծա-
5 նօթ, Զի պահեսցէ զքեզ ի կնոջէ օ-
տարէ [4]եւ ի չարէ", յորժամ բանիւք զքեզ
6 ի պատրանս արկանիցէ։ Ի պատուհանից
տան [5]իւրոյ ի հրապարակս կարկառեալ,
7 Զոր տեսանիցէ" յանմտից մանկանց,
8 զպակասամիտն յերիտասարդաց, Որ
անցանիցէ ընդ հրապարակս առ անկեամբ
9 գնացից տան նորա, Եւ խօսիցի ընդ
խաւար երեկոյին, յորժամ դադարեալ ի
10 մթոց գիշերոյն իցեն. Եւ կինն ընդ ա-
ռաջ լինի նմա պոռնկութեան կերպա-
րանօք, [6]որ յիմարեցուցանէ զմիտս ե-
11 րիտասարդաց՝ Սրարբեալ" եւ պակչո-
տեալ, ի տան ոչ դադարեն ոտք նորա.
12 Զի ժամանակ մինչ արտաքոյ յածի, եւ
ժամանակ ինչ ի հրապարակս առ ամե-
13 նայն անկեան դարանակալ լինի։ Ապա
բուռն հարեալ համբուրեաց զնա, եւ
14 լրբենի երեսօք ասէ ցնա, [7]Ուխտք խա-
ղաղութեան են ինձ, այսօր հատուցա-
15 նեմ [8]զաղօթս իմ. Սմին իրի իսկ ելի
ընդ առաջ քո. ցանկացեալ երեսաց քոց՝
16 զտի զքեզ։ Երիզապատ սնդեցի զզա-
հոյս իմ, պատատայիւր Եգիպտացւոց
17 զարգարեցի. Կրքմացան պատրաստեցի
զանկողինս իմ, եւ զտուն իմ կինամո-
18 մով խնկեցի։ Եկ եւ վայելեսցուք սի-
րով մինչեւ յառաւօտն, եկ եւ խաղա-
19 ցուք ցանկութեամբ. Զի ոչ է այր իմ ի
տան, այլ գնացեալ է ճանապարհ հեռի,
20 Զքսակն արծաթոյ ի ձեռին իւրում ա-
ռեալ, յետ բազում աւուրց թէ ուրեք
21 դարձցի ի տուն իւր։ Եւ մոլորեցոյց զնա
բազում բանիւք, եւ խեղդիւք շրթանց
22 իւրոց վարանեաց զնա։ Եւ նա գնաց
զկնի նորա [9]յիմարեալ՝ իբրեւ զարջառ
ի սպանումն, եւ իբրեւ [10]զշուն տռամբ,
23 Կամ իբրեւ զեղջերու հարեալ նետիւ
ընդ լերդակողմն". եւ փութայ իբրեւ
զհաւ ի ծուղակս, եւ ոչ գիտէ եթէ վասն
անձին կորստեան ընթանայ։
24 Արդ, որդեակ, լուր ինձ, եւ անսա
25 բանից բերանոյ իմոյ։ Մի՛ խոտորեսցի
սիրտ քո ի ճանապարհս նորա, եւ մի՛ մո-
26 լորեսցիս ի շաւիղս նորա։ Զի զբազումս
տապաստ արկեալ է նորա խոցոտելով,
եւ [11]անթիւ են" սպանեալք ի նմանէ։
27 Ճանապարհք դժոխոց են տուն նորա,
որ իջուցանեն ի շտեմարանս մահու։

## Գլ. Ը

1 [12]Վասն այսորիկ դու զիմաստութիւն
քարոզեսցես, զի հանճար ձայնատու լիցի
2 քեզ։ Քանզի ի վերայ լերանց գլխաւորաց
3 է, եւ ի մէջ շաւղաց հաստեալ կայ. Եւ
առ դրունս հզօրաց սպասէ, եւ ի մուտս
4 օրհնի։" Զձեզ աղաչեմ, ո՛վ մարդիկ, եւ
բաշխեմ զբարբառ իմ որդւոց մարդկան։
5 Իմացարուք, [13]անմեղք, զխորագիտու-
թիւն. եւ [14]անխրատք, դիք ի սիրտս
6 ձեր։ Ունկն դիք ինձ, զի զպարկեշտս
բարբառիմ, եւ բղխեմ ի շրթանց իմոց
7 զուղղութիւնս։ Զի զճշմարտութիւն
խոկասցէ կոկորդ իմ, եւ պիղծ են ա-
8 ռաջի իմ շրթունք սուտք։ Արդարու-
թեամբ են ամենայն պատգամք բերա-
նոյ իմոյ, եւ ոչ ինչ գոյ ի նոսա ծռու-

[1] Եբր. տացէ [2]Եբր. պակասէ մտօք [3]Եբր. վրէժ-
խնդրութեան. (35) Ոչ առնուցու ակն եւ ոչ
միոյ իրիք փրկանաց. եւ ոչ հաճեսցի [4]Յեբր.
պակասէ [5]Եբր. իմոյ՝ ընդ վանդակ իմ հայեցայ.
(7) Եւ տեսի [6]Եբր. նենգաւոր սրտիւ. (11)
Սրարբեալ [7]Եբր. Զոհք [8]Եբր. զուխտ

[9] Եբր. վազվազակի [10]Եբր. զոտն ի պատուհաս
յիմարի, (23) Մինչեւ խոցեսցէ նետ զլեարդ նորա
[11]Եբր. հզօր էին [12]Եբր. Ո՞չ ապաքէն իմաստու-
թիւն աղաղակէ, և հանճար ձայնատու լինի։ (2)
Ի գլուխս բարձանց առ ճանապարհաւ, և ի մէջ
շաւղաց հաստեալ կայ. (3) Առ դրունս ի բերան
քաղաքաց, ի մուտս դրանց գոչէ, [13]Եբր.
ոգէտք [14]Եբր. անմիտք

9 թիւն եւ ոչ թիւրութիւն։ Ամենայն ինչ
ուղիղ է իմաստնոց, եւ յարմարեալ այ-
10 նոցիկ որք գտանեն զգիտութիւն։ Ըն-
կալարուք զխրատ՝ եւ մի՛ զարծաթ, եւ
11 զգիտութիւն քան զոսկի ընտիր։ Լաւ է
իմաստութիւն քան զականս պատուա-
կանս, եւ ամենայն ինչ պատուական չարժէ
12 զնա։ Ես իմաստութիւն բնակեցայ ի
խորհրդածութեան. զխորհուրդս եւ զգի-
13 տութիւն կոչեցի յիս։ Երկեւղ Տեառն
ատեայ զանիրաւութիւն, զթշնամանս
եւ զհպարտութիւն եւ զճանապարհս
14 [1]չարեաց։ Իմ է խորհուրդ եւ զգուշու-
թիւն, իմ է հանճար եւ զօրութիւն։
15 Ինեւ թագաւորք թագաւորեն, եւ հզօրք
16 [2]գրեն զարդարութիւն. Ինեւ մեծամեծք
մեծանան, եւ [3]բռնաւորք ինեւ ունին զեր-
17 կիր՚՚։ Ես որ զիս սիրեն՝ սիրեմ. եւ
18 որ զիս [4]խնդրեն՝ գտցեն շնորհս՚՚։ Մե-
ծութիւն եւ փառք՝ իմ են, եւ ստա-
ցուածք [5]բազմաց եւ արդարութիւն։
19 Լաւ է զիս ստանալ՝ քան զոսկի եւ զա-
կանս պատուականս, եւ զարդիւնս իմ՝
20 քան զարծաթ ընտիր։ Ի ճանապարհս
արդարութեան գնամ, եւ ի մէջ շաւ-
21 ղաց արդարութեան շրջիմ։ Զի բաշ-
խեցից սիրելեաց իմոց զմեծութիւն, եւ
զգանձս նոցա լցուցից բարութեամբ։
[6]Եթէ պատմեցից ձեզ զհանապազորդ
լինելոցն, եւ յիշեցուցից որ յաւիտե-
22 նիցն համարեալ են,՚՚ Տէր ստացաւ զիս
ի սկիզբն ճանապարհաց իւրոց [7]ի գործս
23 իւր՚՚. Յառաջ քան զյաւիտեանս հաս-
տատեաց զիս, ի սկզբանէ յառաջ քան
24 զերկիր առնել։ Նախ քան զանդունդս
[8]գործել, նախ քան զբղխել աղբերաց
25 ջրոյ։ Յառաջ քան զլերինս հաստատել,
եւ յառաջ քան զամենայն բլուրս ծնաւ
26 զիս։ [9]Տէր արար զշէնս եւ զանշէնս եւ
զեզերս բնակեալս ի ներքոյ երկնից՚՚
27 Մինչդեռ պատրաստէր զերկինս՝ ընդ
նմա էի, եւ մինչ [10]զատուցանէր զաթոռ
28 իւր ի վերայ հողմոյ՚՚։ Յորժամ զօրացու-
ցանէր զամպս վերինս, եւ յորժամ հաս-
տատուն դնէր զաղբերս ի ներքոյ երկ-
29 նից, Ի դնել ծովու զհաստատութիւն
իւր, զի ջուրք մի՛ անցցեն ըստ ափն
նորա, ի ժամանակի յորում հաստատուն
30 դնէր զհիմունս երկրի, Ես էի [11]առ նո-
վաւ պատշաճեալ, ես էի որով ուրախ
լինէր Տէր՚՚ հանապազ, եւ ցնծայի ա-
31 ռաջի նորա յամենայն ժամ։ [12]Յորժամ
զուարճացեալ էր զտիեզերս բովանդա-
կել՚՚, եւ ուրախ լինէի յորդիս մարդկան։
32 Արդ, որդեակ, լուր ինձ. եւ երանե-
լիք են՝ որ զճանապարհս իմ պահեսցեն։
33 Լուարուք զիմաստութիւն՝ եւ իմաս-
տունք լերուք, եւ մի՛ [13]պաշարիցիք։
34 Երանելի է այր որ լուիցէ ինձ, եւ մարդ
որ [6]զճանապարհս իմ պահիցէ,՚՚ տքնիցի
առ դրունս իմ հանապազ, եւ պահիցէ
35 զսեամս մտից իմոց։ Զի [14]ելք իմ են ելք
կենաց, եւ պատրաստին կամք իմ՚՚ ի
36 Տեառնէ։ Իսկ որ յիս մեղանչեն՝ ամ-
պարշտեն յանձինս իւրեանց, եւ որք
ատեանն զիս՝ սիրեն զմահ։

## Գլ. Թ

1 Իմաստութիւն շինեաց իւր տուն, եւ
2 կանգնեաց սիւնս եւթն։ Զեն զզենլիս
իւր, եւ խառնեաց ի խառնելիս զգինի
իւր, եւ պատրաստեաց զսեղան իւր։
3 Եւ առաքեաց [15]զծառայս իւր, կոչել
բարձր քարոզութեամբ ի խառնելիս իւր՝
4 եւ ասէ՚՚, Որ ոք իցէ անզգամ, եկեսցէ
5 առ իս։ Եւ ցպակասամիտսն ասէ, Ե-
կայք կերայք ի հացէ իմմէ, եւ արբէք
6 զգինի իմ զոր խառնեցի ձեզ։ Թողէք
զանզգամութիւն եւ կեցջիք,[16]խնդրեցէք
զիմաստութիւն զի ապրեսջիք. եւ ուղ-
ղեցէք գիտութեամբ զհանճար, եւ ու-
ղիղ ճանապարհաւ իմացարուք զխրատ՚՚։
7 Որ խրատէ զչարս՝ առցէ անձին իւ-
րում անարգանս, եւ որ յանդիմանէ
8 զամպարիշտն՚՚[17]ատեայ զանձն՚՚։ Մի՛ յան-
դիմաներ զչարս, զի մի՛ ատեսցեն զքեզ.
յանդիմանեա զիմաստունն, եւ սիրեսցէ
զքեզ, [6]զանմիտն, եւ յաւելցէ ատել
9 զքեզ։՚՚ Տուր իմաստնոյն պատճառս, եւ
իմաստնագոյն եւս լիցի. տեղեկացո զար-

[1] Եբր· չարեաց, եւ զբերան կամակոր ատեամ։ [2] Եբր· դատին [3] Եբր· իշխանք, ամենայն դատաւորք երկրի [4] Եբր· խնդրեն կանուխ՝ գտցեն զիս [6] Եբր· ընտիրք [6] Յ Եբր· պակաս է [7] Եբր· յառաջ քան զգործս իւր ի վաղուց [8] Եբր· ծնեալ է իմ [9] Եբր· Մինչչեւ արարեալ նորա զերկիր եւ զվայրս, եւ սկիզբն հողոյ երկրի, [10] Եբր· ձգէր ծիր ի վերայ երեսաց անդնդոց

[11] Եբր· առ նմա ճարտարապետ. եւ էի զուարճութիւն նորա [12] Եբր Զուարճացեալ էի յաշխարհի, յերկրի նորա [13] Եբր· մերժէք [14] Եբր· որ զիս գտանիցէ, գտանիցէ զկեանս. եւ ստասցի շնորհս [15] Եբր· զաղախնայս իւր. կոչէ ի բարձրաւանդակս քաղաքի [16] Եբր· գնացէք ընդ ճանապարհ հանճարոյ [17] Եբր· զարատ նոցա

10 գարն, եւ յաւելցէ [1]ընդունել։ Սկիզբն
իմաստութեան՝ երկեւղ Տեառն, եւ
[2]խորհուրդ սրբոց՝ հանճար. իմանալ զօ-
11 րէնս՝ մտաց առատաց է։ Այսու օրինա-
կաւ՝ բազում ժամանակս կեցցես, եւ
12 յաւելցին քեզ ամք կենաց։ Որդեակ,
եթէ իմաստուն լինիցիս, անձին քում
լիցիս [3]եւ ընկերաց, եւ եթէ անզգամ լինիս՝
միայն սպեղեսցես զչարիս։ [3]Որ հաստատի
ի ստութիւն՝ այնպիսին զհողմս արածէ,
եւ նոյն հալածէ զթռչունս թեւաւորս.
քանզի եթող զճանապարհս այգւոյ իւ-
րոյ, եւ ի շաւղաց անդոյ իւրոյ մոլորեալ
է. գնայ ընդ անջրդին եւ ընդ անա-
պատն, եւ ընդ երկիր կարգեալ ի ծա-
րաւուտ, եւ ժողովէ ձեռօք իւրովք
զանպտղութիւն։
13 Կին անզգամ [4]եւ յանդուգն՝ կարօտ
լինի հացի, եւ որ ոչ գիտէ զամօթ,
14 Նստաւ առ դրունս տան իւրոյ աթո-
15 ռով յայտնապէս ի հրապարակս. Կոչէ
զանցաւորս որ գնայցեն ուղիղ զճա-
16 նապարհս իւրեանց, [5]Որ ոք իցէ ի ձէնջ
առաւել անմտագոյն՝ առ իս դարձ-
ցի. եւ պակասամտացդ հրաման տամ,
17 եւ ասեմ, Հաց գաղտնի մտադիւր կե-
րիջիք, եւ ջուր գողունի՝ ախորժելով
18 արբջիք։ Եւ ոչ գիտէ եթէ [6]երկրա-
ծինք առ նմա կորնչին, եւ ի թախս
դժոխոց հասանեն։ Այլ դու ի բաց ոս-
տիր, եւ մի՛ յամեր ի տեղւոջ նորա, եւ
մի՛ հաստատեր զակն քո ի նմա զի այնպէս
անցցես ընդ ջուրն օտար, եւ անցանիցես
ընդ գետն օտարական. եւ ի ջրոյ օտարէ
ի բաց լինիցիս, եւ յօտար աղբերէ մի՛
ըմպիցես. զի բազում ժամանակս
կեցցես, եւ յաւելցին քեզ ամք կենաց։

Առակք Սողոմոնի

[3]Բան երկրորդ

Գլ. Ժ

1 Որդի իմաստուն ուրախ առնէ զհայր,
2 որդի անմիտ՝ տրտմութիւն է մօր։ Ոչ
օգնեսցեն գանձք անօրինաց, այլ ար-
3 դարութիւն փրկէ ի մահուանէ։ Ոչ սո-
վամահ առնէ Տէր զանձն արդարոյ, եւ
[7]զկեանս ամպարշտաց կործանեսցէ։
4 [8]Տնանկութիւն զայր խոնարհեցուցանէ,
5 ձեռք ժրաց մեծացուցանեն։ [9]Որդի
խրատեալ՝ իմաստուն լիցի, եւ զանմիտն
ի ծառայութեան վարեսցէ։ Ապրեցաւ
ի խորշակէ որդի իմաստուն, խորշակա-
հար լինի ամարայնի որդի անօրէն։
6 Օրհնութիւն Տեառն ի գլուխս արդա-
րոց, զբերանս ամպարշտաց ծածկեսցէ
7 սուգ տարաժամ։ Յիշատակ արդարոց
գովութեամբ. անուն ամպարշտաց շիջ-
8 ցի։ Միտս իմաստուն ընկալցի զպա-
տուիրանս, եւ յածն շրթամբք գայթակ-
9 ղեալ կործանեսցի։ Որ գնայ միամտու-
թեամբ՝ գնայ յուսով, իսկ որ թիւրէ
10 զճանապարհս իւր՝ յայտնի լիցի։ [10]Որ
ակնարկէ ակամբ նենգութեամբ՝ ժողո-
վէ արանց զտրտմութիւն, որ յանդի-
մանէ համարձակութեամբ՝ առնէ զխա-
11 ղաղութիւն։ Աղբիւր կենաց [11]ի ձեռին
արդարոյ, զբերան ամպարշտաց ծած-
12 կեսցէ կորուստ։ Ատելութիւն գրգռէ
զհակառակութիւն, եւ [12]զամենեսին որ
13 ոչն հակառակին՝ ծածկէ սէր։ Որ ի
շրթանց բղխէ զիմաստութիւն, իբրեւ
14 գաւազանաւ հարկանէ զայր անմիտ։ Ի-
մաստունք ծածկեն զիմաստութիւն,
բերան յանդգնելոյ մերձ է ի բեկումն։
15 Ստացուածք մեծատանց՝ քաղաք ամուր,
բեկումն ամպարշտաց՝ աղքատութիւն։
16 Գործք արդարոց՝ կեանս առնեն, եւ
17 պտուղք ամպարշտաց՝ մեղս։ [13]Ճանա-
պարհս կենաց պահէ Տէր. խրատ ա-
ռանց յանդիմանութեան մոլար է։
18 Ծածկեն զթշնամութիւն շրթունք ար-
դարք, իսկ որ ի վեր հանեն զբամբա-
19 սանս՝ անզգամք են։ Ի շատախօսու-
թենէ ոչ ապրեսցիս ի մեղաց, թէ խնա-
20 յես ի շրթունս՝ իմաստուն լինիս։ Ար-
ծաթ ընտիր է լեզու արդարոյ, սիրտ
21 ամպարշտի նուաղեսցի։ Շրթունք ար-

[1]Եբր. զգիտութիւն [2]Եբր. գիտութիւն Սրբոյն՝ հանճար։ (11) Եւ [3]Եբր. պակասէ [4]Եբր. կագեցող է, անմիտ է եւ ոչ գիտէ ինչ. [5]Եբր. Որ անզգամն իցէ՝ [6]Եբր. անդ են երկրածինք, կամ, մեռեալք. ի թախս դժոխոց հրաւիրեալք նորա։ [7]Եբր. զցանկութիւն

[8]Եբր. Աղքատ առնեն ձեռք ծուլութեան [9]Եբր. Որ ժողովէ ամարայնի՝ որդի հանճարեղ է, որ ննջէն ի հունձս՝ է որդի որ յամօթ առնէ։ (6) Օրհնութիւն ի գլուխս արդարոց, իսկ բռնութիւն փակէ զբերան ամպարշտաց [10]Եբր. Որ ակնարկէ ակամբ՝ տայ ցաւս, և ցոփն շրթամբ կործանեսցի։ [11]Եբր. բերան [12]Եբր. սէր ծածկէ զամենայն յանցանս։ (13) Ի շրթունս հանճարեղին գտանի իմաստութիւն, իսկ թիկանց պակասամտին՝ գաւազան։ [13]Եբր. Ի ճանապարհի կենաց է որ պահէ զխրատ, և որ եթող զյանդիմանութիւն՝ մոլար է։ (18) Որ ծածկէն զատելութիւն՝ շրթունք ստութեան են

գարդ [1]ճանաչեն զբարձունս, եւ ան-
զգամք ի կարօտութեան˝ սատակեսցին։
22 Օրհնութիւն Տեառն՝ [2]ի գլուխ արդա-
րոց․ եւ˝ նոյն մեծացուցանէ, եւ ոչ եւս
յաւելու տրտմութիւն [3]ի սիրտ նորա։
23 Ծիծաղելով գործէ անզգամ զչար, իսկ
իմաստութիւն առն նիւթէ զհանճար։
24 Ըստ կորստեան չրջի ամպարշտին, ցան-
25 կութիւն արդարոց՝ ընդունելի է։˝ Յան-
ցանել մրրկի եղծանի ամպարիշտն, իսկ
արդարոյն [4]խոյս տուեալ՝ կեցցէ յաւի-
26 տեան˝։ Որպէս ագոխ ատամանց վնա-
սակար է եւ ծուխ աչաց, նոյնպէս [5]եւ
անօրէնութիւն՝ որոց վարին նովաւ˝։
27 Երկեւղ Տեառն յաւելու յաւուրս, ամք
28 ամպարշտաց նուազեսցին։ Յերկարի ար-
դարոց ուրախութիւն, յոյս ամպարշտաց
29 կորիցէ։ Ամրութիւն սրբոց [6]երկեւղ
Տեառն, եւ բեկումն այնոցիկ ոյք գործեն
30 զչարիս։ Արդար՝ յաւիտեան ոչ դողասցէ,
ամպարիշտք մի՛ բնակեսցեն յերկրի։
31 Բերան արդարոյ բղխէ զիմաստութիւն,
32 լեզու անիրաւի սատակեսցի։ Շրթունք
[7]արանց արդարոց բղխեսցեն˝ զշնորհս,
բերան ամպարշտաց [8]կործանեսցի։

## ԳԼ. ԺԱ

1 Կշիռք նենգութեան պիղծ են առաջի
Տեառն, կշիռ արդար ընդունելի է նմա։
2 [9]Ուր վայր մտանեն թշնամանք, անդ
են եւ անարգանք․ բերան խոնարհաց
3 խոկայ զիմաստութիւն˝ Կատարելու-
թիւն ուղղոց առաջնորդեսցէ նոցա, եւ
գայթակղութիւն արհամարհողաց աւե-
4 րեսցէ զնոսա։ Ոչ օգնեսցեն ինչք յա-
ւուր բարկութեան, այլ արդարութիւն
փրկէ ի մահուանէ։ [2]Մեռաւ արդարն՝
եւ եթող զղջումն յոյժ․ յանդուգն եւ
ամնհարութեամբ լինի կորուստ ամ-
5 պարշտաց։˝ Արդարութիւն ամբծի ուղ-
ղէ զճանապարհս, եւ [10]յամպարշտութիւն
6 անկանի անիրաւն։ Արդարութիւն արանց
ուղղոց փրկէ զնոսա, [11]եւ անմտութեամբ
7 կորնչին անօրէնք˝։ Ի վախճանել առն
[12]արդարոյ՝ ոչ կորնչի յոյս, բայց˝ պար-
8 ծանք ամպարշտաց կորիցեն։ Արդար՝
յորսոգաց փրծանի, եւ փոխանակ նորա
9 մատնի ամպարիշտն։ Ի բերանս անօրի-
նաց՝ որոգայթ ընկերաց, իմաստութիւն
10 արդարոց յաջողեալ է։ Ի բարութեան
արդարոց յորինեցաւ քաղաք, եւ ի կորս-
տեան ամպարշտաց եղեւ ուրախութիւն։
11 Յօրհնութեան ուղղոց բարձրասցի քա-
ղաք, եւ բերանօք ամպարշտաց կոր-
12 ծանեսցի։ Արհամարհէ զընկերս այր
պակասամիտ, այր իմաստուն զլռու-
13 թիւն սիրէ։ Այր երկխօս՝ յայտնէ զխոր-
հուրդս [2]յատենի, իսկ հաւատարիմն ոգ-
14 ւով՝ ծածկէ զիրս։ [13]Որոց ոչ գոյ առաջ-
նորդութիւն՝ թօթափին իբրեւ զտերեւ․
փրկութիւն գոյ ի խորհուրդս բազումս։
15 Անզգամ՝ չարիս գործէ յորժամ խառ-
նակիցի ընդ արդարոյ, եւ ատեայ զբար-
16 բառ զգուշութեան։ Կին շնորհակալ
բարձր առնէ զփառս առն իւրոյ, եւ ա-
թոռ անարգութեան՝ կին որ ատեայ զի-
րաւունս։ Ի մեծութենէ վատք կարօտ
լինին, իսկ որ ժիրքն են՝ հաստատին
17 մեծութեամբ։˝ Անձին իւրում գործէ
բարի այր ողորմած, կորուսանէ զմար-
18 մին իւր այր անողորմ։ Ամպարիշտ գոր-
ծէ զգործս անիրաւութեան․ [14]զաւակ
19 արդարոց˝ վարձ ճշմարտութեան։ [15]Որ-
դի արդար ծնանի ի կեանս․ հալածանք
20 ամպարշտաց ի մահ։˝ Պիղծ են Տեառն՝
[16]ճանապարհք թիւրք˝, եւ ընդունելի են
նմա ամենայն ամբիծք ճանապարհաւ։
21 [17]Որ ձեռնարկէց լինի տարապարտուց, ա-
ռանց պատժի ոչ լիցի․ իսկ որ սերմա-
նէ զարդարութիւն, ընկալցի վարձ հա-
22 ւատարիմ։˝ Իբրեւ գինդ ոսկի ի քիթ
խոզի, այնպէս կնոջ չարաբարոյի գե-
23 ղեցկութիւն։ Ցանկութիւն արդարոց

[1] Եբր․ արածեն զբազումս, եւ անզգամք ի կարօ-
տութեան հանճարոյ [2] Եբր․ դ–է–ն [3] Եբր․
ընդ նմա։ (23) Իբրեւ զուարճութիւն է անզ-
գամի չարագործութիւն, իսկ առն հանճարեղի՝
իմաստութիւն։ (24) Երկեւղ ամպարշտի՝ նոյն
եկեսցէ նմա, իսկ ցանկութիւն արդարոց տացի։
[4] Եբր․ հիմն յաւիտեան է [5] Եբր․ ծոյլ որոց ա-
ռաքեն զնա [6] Եբր․ ճանապարհ [7] Եբր․ ար-
դարոց դիտեն [8] Եբր․ նենգութիւն [9] Եբր․
Եկայ ամբարտաւանութիւն, գան եւ անար-
գանք․ իսկ ընդ խոնարհս է իմաստութիւն։
[10] Եբր․ յամպարշտութիւն իւր

[11] Եբր․ իսկ անօրէնք ըմբռնին ի ցանկութեան չարի
չարութեան իւրեանց [12] Եբր․ չարի, կորնչի յոյս եւ
[13] Եբր․ Առ ի չգոյէ առաջնորդութեան՝ կործանի
ժողովուրդ, իսկ փրկութիւն՝ ի բազմութեան
խորհրդականաց։ (15) Տուժելով տուժեսցի որ
երաշխաւոր լինի օտարի․ որ ատէ զերաշխիս՝ իցէ
յապահովի։ (16) Կին շնորհալի ստանայ փառս, եւ
հզօրք ստասցին մեծութիւն։ [14] Եբր․ որ սերմանէ
զարդարութիւն՝ առցէ [15] Եբր․ Այնպէս արդա-
րութիւն ի կեանս, եւ որ զհետ երթայ չարին՝ ի
մահ իւր։ [16] Եբր․ որ թեւր են սրտիւ [17] Եբր․
Ամպարիշտք ձեռն ի ձեռն՝ առանց պատ-
ժի ոչ մնան, իսկ զաւակ արդարոց ապրեսցի։

ամենայն բարութեամբ, յոյս ամպարշտաց
24 [1]կորիցէ: Են որ [2]զիւրեանց սերմանեն"
եւ բազմապատիկ առնեն, եւ են՝ որ
[3]յանիրաւութենէ ժողովեն" եւ կարօտա-
25 նան: Ամենայն անձն օրհնեալ՝ [4]պար-
զամիտ է, եւ այր բարկացօղ՝ տգեղ է
26 կերպարանօք: Որ խնայէ ի ցորեան՝
լքցէ զնա օտարոց, եւ որ ճշդէ զցո-
րեան" հրապարակաւ լիցի. այլ օրհ-
27 նութիւն ի գլուխ փոխողաց: Որ նիւթէ
զբարիս՝ խնդրէ զշնորհս բարութեան,
28 իսկ որ խնդրէ զչար՝ հասցէ նմա: Որ
յուսայ ի մեծութիւն [5]կործանեսցի. իսկ
որ վերակացու լիցի արդարոց՝ նա ծա-
29 գեսցէ: Որ ոչ գայցէ զտամբ իւրով",
նա զհողմս ժառանգեսցէ. եւ ծառա-
30 յեսցէ անմիտն իմաստնոյն: Ի պտղոյ
արդարութեան բուսանի ծառ կենաց,
[6]բարձցին տարաժամ անձինք անօրինաց:
31 Եթէ արդարն հազիւ կեցցէ", իսկ մե-
ղաւորն եւ ամպարիշտն ո՞ւր գտանիցին:

Գլ. ԺԲ

1 Որ սիրէ զխրատ՝ սիրէ զիմաստութիւն,
եւ որ ատեայ զյանդիմանութիւն՝ ան-
2 միտ է: [7]Լաւ է որ" գտանէ շնորհս ի
Տեառնէ, իսկ այր անօրէն [8]կարկեսցի:
3 Ոչ յաջողեսցի մարդոյ յանօրէնութենէ,
4 արմատք արդարոց ոչ հատցին: Կին
ժրագլուխ՝ պսակ է առն իւրոյ. որպէս
[9]որդն՝ փայտի վնասակար է, նոյնպէս
5 կորուսանէ զայր կին չարագործ": Խոր-
հուրդք արդարոց իրաւունք, [10]առաջ-
նորդք են ամպարիշտք նենգութեանց:
6 Բերանք ամպարշտաց նենգաւորք," բե-
7 րան ուղղոց փրկեսցէ զնոսա: Ցոր կողմ
եւ դարձցի ամպարիշտն՝ եղծանի, տունք
8 արդարոց յերկարեսցին: [11]Բերան իմաստ-
նոյ գովի ի մարդկանէ", իսկ լօթա-
9 միտն արհամարհեսցի: Լաւ է մարդոյ
[12]խոնարհութեամբ ծառայել անձին", քան
անձին շուք եղեալ՝ եւ հաց մուրանալ-
10 ցէ: Արդար ողորմի անասնոց իւրում,
11 աղիք ամպարշտաց անողորմ են: Որ
գործէ զերկիր իւր՝ յագեսցի հացիւ, իսկ
որ զհետ երթան զնանրութեան՝ պա-
կասամիտք են: [13]Որ ախորժէ զգինեաց
ցնգերանս, թողցէ ի յանակութիւնս իւր
12 զանարգանս" Ցանկութիւնք ամպարշ-
տաց՝ [14]չար են, արմատք բարեպաշտաց
13 հաստատունք" են: Վասն վնասու շրթանց
անկանի յորոգայթ մեղաւորն, եւ ար-
դարն զերծանի [15]ի նմանէ: Բազմահայ-
եացն զթութիւն գտանէ. որ պատահէ
14 ի դրունս՝ նեղէ զոգիս": Ի պտղոյ բերա-
նոյ առն՝ լցցի անձն իւր բարութեամբ,
հատուցումն [16]շրթանց իւրոց հատուսցի
15 նմա: Ճանապարհք անմտաց՝ ուղիղ
թուին առաջի նոցա. ունկնդիր լինի
16 խրատու իմաստունն, Իսկ անմիտն առ
օրին յայտնէ զբարկութիւն իւր. թա-
քուցանէ զանարգանս իւր այր խորա-
17 գէտ: [17]Եւ զյայտնի հաւատս պատմէ ար-
18 դար". վկայ անօրինաց նենգաւոր է: Են՝
որ լանիւք իւրեանց խոցեն որպէս սրով,
19 բայց լեզուք իմաստնոց բժշկեն: Շրթունք
ճշմարիտք [18]հաստատեն զվկայութիւն,
վկայ վաղվաղուկ՝ ունի" լեզու անիրաւ:
20 Նենգութիւն կայ ի սրտի չարանիւթի,
իսկ որ կամին զխաղաղութիւն՝ ուրախ
21 լիցին: Ոչ [19]է հաճոյ" արդարոյ եւ ոչ մի
ինչ անիրաւ, իսկ ամպարիշտք լցցին
22 չարութեամբ: Պիղծ են առաջի Տեառն
շրթունք սուտք, իսկ որ առնէ զհա-
23 ւատս՝ ընդունելի է նմա: Այր իմաս-
տուն՝ [20]աթոռ հանճարոյ, սիրտ անզգա-
24 մաց պատահեսցէ նզովից: Ձեռն ընտ-
րելոց դիւրաւ յաղթեսցէ. նենգաւորք
25 մատնեսցին ի յափշտակութիւն: Բան
ահեղ խռովեցուցանէ զսիրտ առն ար-
դարոյ," աւետիք բարեաց՝ ուրախ առ-
26 նեն զնա: [21]Արդարն իրաւախոհ սիրէ

---

[1]Կամ, բարկութիւն [2]Եբր. սփռեն [3]Եբր. խնայեն զարժանն [4]Եբր. պարարեսցի, եւ որ ոռոգէն՝ ինքն եւս ոռոգեսցի: (26) Որ խնայէ ի ցորեան [5]Եբր. իւր կործանեսցի, իսկ իբրեւ զտերեւ արդարք բողբոջեսցեն: (29) Որ նեղէ զտուն իւր [6]Եբր.՝ եւ որ շահի զոգիս՝ իմաստուն է: (31) Ահա արդարն կրէ պատուհաս յերկրի [7]Եբր. Այր բարի [8]Եբր. դատեսցի յանցաւոր [9]Եբր. փտութիւն յոսկերս նորա է որ յամօթ առնէն զնա [10]Եբր. խորհուրդ ամպարշտացն նենգութիւն: (6) Բանք ամպարշտաց դարանք են արեան. իսկ [11]Եբր. Ըստ իմաստութեան իւրում գովի այր [12]Եբր. լինել խոնարհ և ունել ծառայ

[13]Յեբր. պակաս [14]Եբր. աւար չարաց են, արմատք բարեպաշտաց պտղատու [15]Եբր. յանձկութենէ [16]Եբր. ձեռաց [17]Եբր. Որ խօսի զճշմարտութիւն՝ պատմէ զարդարութիւն [18]Եբր. հաստատեսցին ի սպառ. իսկ վայրկեան մի՝ [19]Եբր. մերձենայ [20]Եբր. թաքուցանէ զգիտութիւն. իսկ սիրտ անզգամաց պատմեսցէ զանմտութիւն: (24) Ձեռն ժրաց իշխեսցէ, իսկ որ ծոյլն է՝ լիցի հարկատու: (25) Հոգք ի սրտի առն կորացուսցէ զնա, իսկ [21]Եբր. Գեր ի վերոյ է քան զընկեր իւր (Կամ, Առաջնորդէ ընկերի իւրում) արդարն,

զանձն. խորհուրդք ամպարշտաց մեղ-
մեխք են։ Զմեղաւորս հալածեն չարիք,
արդարոց հասցեն բարութիւնք։ Ճա-
նապարհք ամպարշտաց մոլորեցուցեն
27 զնոսա։ [1]Ոչ պատահեսցէ որս նենգա-
ւորի. ստացուածք պատուական՝ այր
28 սուրբ եւ առատ։ Ի ճանապարհս ար-
դարութեան կեանք, [2]ճանապարհք ո-
խակալաց մահ։

ԳԼ. ԺԳ

1 Որդի խորագէտ հնազանդ հօր, [3]որդի
2 անհնազանդ՝ ի կորուստ եղիցի։ Ի պտղոյ
արդարութեան կերիցէ առատ, անձինք
անօրինաց սատակեսցին առժամայ։
3 Որ խնայէ ի բերան իւր՝ պահէ զանձն,
իսկ որ յանդուգն է շրթամբք՝ խռովէ
4 զանձն իւր։ [4]Ի կարօտութեան է ամե-
նայն վատ, ձեռք ժրաց ի պարարտս։
5 Զբան անիրաւ ատեայ արդար. իսկ ամ-
պարիշտն [5]ամաչէ, եւ ոչ գայցէ համար-
6 ձակութիւն։ Արդարութիւն պահէ զան-
մեղս ճանապարհաւ, զամպարիշտս ան-
7 զգամեցուցանեն մեղք։ Են՝ որ մեծա-
ցուցանեն զանձինս՝ եւ ոչ ինչ ունին,
եւ են՝ որ խոնարհեցուցանեն զանձինս՝
8 եւ լինեն մեծութեամբ բազմաւ։ Փրկանք
անձին մարդոյ՝ մեծութիւն իւր, իսկ
անանկն ոչ հանդարտէ սպառնալի։
9 Լոյս արդարոց՝ [6]յամենայն ժամ, լոյս
ամպարշտաց՝ շիջցի։ [7]Անձինք նենգա-
ւորք՝ մոլորեսցին ի մեղս, այլ արդարք
10 գթասցին եւ ողորմեսցին։ Անզգամն
թշնամանօք գործէ զչարիս, իսկ որ ի-
րաւախոհքն են յանձինս՝ իմաստունք
11 են։ Մեծութիւն խուսեալ անիրաւու-
թեամբ՝ պակասեսցէ, իսկ որ [8]ստացուած-
12 պաշտութեամբ ժողովէ՝ բազմասցի։ Լաւ
է ի սկզբան օգնել սրտի, քան որ վաղ-
վաղիցէ խոստանալ՝ եւ կախեալ կայցէ
զյուսոյ։ Արդար ողորմի եւ տայ փոխ.
ծառ կենաց է ցանկութիւն բարեաց։
13 Որ արհամարհէ զիրօք՝ արհամարհեսցի
ի նոցանէ. որ երկնչի ի պատուիրանէն՝
առողջ լիցի։ Որդւոյ նենգաւորի՝ բարի
ինչ մի՛ եղիցի. ծառայի իմաստնոյ՝ յա-
ջողեսցին գործք իւր, եւ ուղղեսցին
14 ճանապարհք նորա։ Օրէնք իմաստնոյ
աղբեւր կենաց, իսկ անմիտն ընդ որո-
15 գայթիւ մեռցի։ Իմաստութիւն բարի՝
տայ շնորհս. [9]եւ ճանաչել զօրէնս՝ մտաց
բարեաց է։ Ճանապարհ արհամարհողաց
16 ի կորուստ։ Ամենայն խորագէտ գործէ
իմաստութեամբ, իսկ անմիտն սարածէ
17 [10]յանձն իւր զչարիս։ Թագաւոր յան-
դուգն անկցի ի չարիս, եւ հրեշտակ
18 հաւատարիմ [11]փրկէ զնա։ Զաղքատու-
թիւն եւ զանարգանս՝ ի բաց բառնայ
խրատ, եւ որ պահէ զյանդիմանութիւնս՝
19 փառաւորեսցի։ [12]Ցանկութիւնք բա-
րեպաշտաց քաղցրացուցանեն զոգիս,
գործք ամպարշտաց՝ հեռի են ի գիտու-
20 թենէ։ Որ գնայ ընդ իմաստունս՝ ի-
մաստուն եղիցի, եւ որ թարթափի ընդ
21 անզգամս՝ [13]յայտնի եղիցի։ Զմեղաւորս
հալածեն չարիք, եւ արդարոց հասցեն
22 բարութիւնք։ Այր առատ ժառանգեցու-
ցանէ զորդիս որդւոց. զանձի արդարոց՝
23 մեծութիւն ամպարշտաց։ [14]Արդարք վա-
յելեսցեն ի մեծութեան ամս բազումս,
24 եւ անիրաւք կորիչցին վաղվաղակի։ Որ
խնայէ ի գաւազան՝ ատեայ զորդի իւր,
25 իսկ որ սիրէն՝ [15]խնամով խրատէ։ Ար-
դարն յուտել իւրում յագեցուցանէ զանձն
իւր, եւ անձինք ամպարշտաց կարօ-
տեալք։

ԳԼ. ԺԴ

1 Իմաստուն կանայք՝ շինեցին տունս,
իսկ անզգամքն ձեռօք իւրեանց կործա-
2 նեցին։ Որ գնայ ուղիղ՝ երկնչի ի Տեառ-

[1]Եբր. Ոչ եփէ ծոյլն զորս իւր, իսկ ստացուած պատուական մարդոյ՝ ժրութիւն։ [2]Եբր. եւ ի ճանապարհի շաւղաց նորա չիք մահ, կամ, իսկ ճանապարհ բազմաց ի մահ [3]Եբր. իսկ որ ծաղր առնէ՝ ոչ անսայ յանդիմանութեան։ (2) Ի պտղոյ բերանոյ իւրոյ կերիցէ մարդ բարութիւն. իսկ անձն անզգամաց՝ զանիրաւութիւն։ [4]Եբր. Ցանկայ եւ ոչ ունի անձն ծուլի. իսկ անձն ժրաց պարարեսցի։ [5]Եբր. առնէ առակ և ամաչե. ցուցանէ [6]Եբր. ուրախ առնէ [7]Եբր. (10) Ամպարտաւանութեամբ յառնէ կռիւ [8]Եբր. ժողովէ ձեռօք՝ բազմացուսցէ։ (12) Յոյս յերկարեալ հիւանդութիւն է սրտի. իսկ ծառ կենաց է ցանկութիւն որ լնու։ (13) Որ արհամարհէ զբան՝ կործանումն նմա. եւ որ երկնչին ի պատուիրանէն՝ եղիցի նմա հատուցումն։ (14) Օրէնք իմաստնոյ՝ աղբեւր կենաց, առ ապրեցոյ յորոգայթից մահու։ [9]Եբր. պակասէ [10]Եբր. յիմարութիւն։ (17) Պատգամաւոր չար [11]Եբր. բժշկութիւն է։ (18) Աղքատութիւն եւ անարգանք այնմ որ անգոսնէ զխրատ [12]Եբր. Ցանկութիւն լցեալ՝ քաղցր է անձին. իսկ գարշանք են անմտաց ի բաց կալ ի չարէ։ [13]Եբր. եղեռն գտանէ [14]Եբր. Բազում կերակուր ի մշակութեան աղքատաց. և է որ կորուսեալ է առ ի չգոյէ արդարութեան։ [15]Կամ. կանուխ

նէ, եւ որ կամակորի ի ճանապարհս
3 իւր՝ [1]անարգեսցի։ Ի բերանոյ անզգա-
մաց՝ գաւազան թշնամանաց. շրթունք
4 իմաստնոց պահեսցեն զնոսա։ Ուր ոչ գոն
եզինք, մսուրք սուրբ են. եւ ուր բազում
արդիւնք են, յայտնի է եզին զօրու-
5 թիւն։ Վկայ հաւատարիմ ոչ ստէ. բոր-
6 բոքէ զստութիւն վկայ անիրաւ։ [2]Խնդրես-
ցես զիմաստութիւն առ ի չարաց, եւ ոչ
գտցես. եւ զհանճար առ յիմաստնոց՝
7 դիւրաւ։ Ամենայն ինչ հակառակ է ան-
զգամի, զէն հանճարոյ շրթունք իմաս-
8 տունք։ Իմաստութիւն խորագիտաց՝
ծանիցէ զճանապարհս նոցա, անմտու-
9 թիւն անզգամաց՝ մոլորութեամբ։ Տունք
անօրինաց պարտաւորեսցին ի սրբութե-
նէ. տունք արդարոց՝ ընդունելի են նմա։
10 Սիրտ առն ընդմտատարի՝ տրտմութիւն
է անձին իւրոյ, եւ յորժամ ուրախ լի-
11 նի՝ չխառնի ընդ թշնամանս։" Տունք
ամպարշտաց՝ կործանեսցին. յարկք ար-
12 դարոց՝ օրհնեսցին։ Է ճանապարհ որ
թուի յաչս մարդկան թէ ուղիղ իցէ, բայց
կատարած նորա երթայ յատակս դժո-
13 խոց։ [3]Ընդ ուրախութիւնս՝ ոչ խառնի
տրտմութիւն, բայց յետոյ ուրախու-
14 թիւնն ի սուգ գայ։" Յիւրոց ճանապար-
հաց յագեսցի [4]խստասիրտն, եւ ի խոր-
հրդոց իւրոց ուղղեսցի" այր բարեար։
15 Անմեղն հաւատայ ամենայն բանի, իսկ
16 խորագէտն [5]գայ ի զղջումն"։ Իմաստունն
զարհուրեալ՝ խոտորեցաւ ի չարէ. իսկ
անզգամն [6]յանձնապաստան խառնակի
17 ընդ անօրինին"։ Բարկասիրտ գործէ ա-
ռանց խորհրդոյ. եւ այր [7]իմաստուն՝
18 յոյժ համբերէ։ Բաժանին ամպարիշտք
զչարիս, իսկ խորագէտք զօրանան ի-
19 մաստութեամբ։ Գայթակղեսցին" չարք
տաղջի բարեաց, եւ ամպարիշտք կոդ-
20 կոդեսցին առ դրունս արդարոց։ Բարե-
կամք ատեսցեն զբարեկամս աղքատս.
21 բարեկամք մեծատանց բազումք։ Որ
անարգէ [8]զտնանկն՝ մեղանչէ. եւ որ ողոր-
22 մի աղքատի՝ երանելի է։ [9]Մոլորեալք
նիւթեն զչարիս, զողորմութիւն եւ
զճշմարտութիւն նիւթեն բարիք. ոչ
գիտեն զողորմութիւն եւ զհաւատս՝ նիւ-
թօղք չարեաց, ողորմութիւն եւ հա-
23 ւատք առ նիւթօղս բարեաց։ Ամենայ-
նի որ հոգայ՝ մի ինչ աւելի է, իմաս-
տութիւն. իսկ անձնդիւրն եւ անհոգն
25 ի կարօտութեան եղիցի։ Պսակ իմաստ-
նոց՝ խորագիտութիւն, եւ գնացք ան-
25 մտաց՝ չարութիւն։ Փրկէ զանձն" վկայ
հաւատարիմ. եւ բորբոքէ ստութեամբ
26 նենգաւորն։ Յերկեւղ Տեառն՝ յոյս զօ-
րութեան, եւ որդւոց իւրոց թողու զհաս-
27 տատութիւն խաղաղութեան։ [10]Հրաման
Տեառն աղբեւր կենաց, եւ առնէ խո-
28 տորել յորոգայթից մահու։ Ի բազում
զօրս՝ փառք թագաւորի. ի նուազել ժո-
29 ղովրդոց՝ բեկումն հզօրաց։ Այր երկայ-
նամիտ՝ բազմապատիկ է խորհրդովք.
30 իսկ կարճամիտն՝ յոյժ անմիտ է։ [11]Այր
հեզ՝ բժիշկ է սրտի. ցեց ոսկերաց՝ սիրտ
31 հոգած։" Որ զրպարտէ զտնանկն՝ բար-
կացուցանէ զԱրարիչ նորա. եւ որ պատուէ
32 զնա՝ ողորմի աղքատի։ Չարեօք իւրովք
մերժի ամպարիշտն. [12]եւ որ յուսայ յան-
33 ձին սրբութիւն՝ արդար է։ Ի սիրտ բա-
րի հանգչի իմաստութիւն, եւ ի սիրտ
34 անմտաց ոչ ծանիցի։" Արդարութիւն
զազգ բարձրացուցանէ. նուազեցուցա-
35 նեն զազգս մեղք։ Ընդունելի է թա-
գաւորի սպասաւոր իմաստուն. [13]եւ իւ-
րով չութափութեամբ թօթափէ զա-
նարգանս. բարկութիւն կորուսանէ զի-
մաստունս":

[1]Եբր. անարգէ զնա [2]Եբր. Որ ծաղրն առնէ՝ խնդրէ զիմաստութիւն, և չիք. իսկ գիտութիւն հանճարեղաց դիւրին է։ (7) Իբրացկաց յառնէ անզգամէ, յորժամ գիտասցես թէ ոչ գոն նորա շրթունք իմաստութեան։ (8) Իմաստութիւն խորագիտի է ճանաչել զճանապարհ իւր. անմտութիւն անզգամացն նենգութիւն է։ (9) Անզգամք ծաղր առնեն զյանցանս (կամ, զպատն յանցանացն). իսկ ի մէջ ուղղոց՝ հաճութիւն։ (10) Սիրտ իրագէտ է դառնութեան անձին իւրոյ, և յուրախութիւն նորա ոչ խառնի օտար։ [3]Եբր. Ի ծիծաղելն իսկ տխրի սիրտ, յետ ուրախութեան գայ սուգ։ [4]Եբր. թեւր սիրտ, և իւրովի՝ [5]Եբր. քննէ զգնացս իւր [6]Եբր. ամբարտաւան է և յանձնապաստան լինի [7]Եբր. նենգաւոր ատելի է։ (18) Անմիտք ժառանգեն զյիմարութիւն, իսկ խորագէտք պսակին իմաստութեամբ։ (19) Խոնարհեսցին

[8]Եբր. զընկեր իւր [9]Եբր. Ո՞չ ապաքէն մոլորին որ նիւթեն չարիս, իսկ ողորմութիւն եւ ճշմարտութիւն որոց խորհին զբարիս։ (23) Յամենայն աշխատութեան գոյ օգուտ, իսկ բան դատարկ կարօտութիւն է միայն։ (24) Պսակ իմաստնոց՝ մեծութիւն նոցա. յիմարութիւն անմտաց՝ յիմարութիւն։ (25) Փրկէ զոգիս [10]Եբր. Երկեւղ [11]Եբր. Սիրտ հանդարտ՝ կեանք մարմնոյ, իսկ նախանձ՝ ցեց ոսկերաց։ [12]Եբր. իսկ արդարն յուսայ ի մահուան իւրում։ (33) Ի սիրտ հանճարեղի՝ հանգչի իմաստութիւն, և որ ինչ ի ներքս անմտաց՝ ծանիցի։ [13]Եբր. իսկ բարկութիւն նորա յայնմ որ ամօթ առնէ

## Գլ. ԺԵ

1 Պատասխանի ողոք դարձուցանէ զսրտ-
մտութիւն. բան խիստ յարուցանէ զբար-
2 կութիւն ։ Լեզու իմաստնոց [1]գիտէ զբա-
րիս . բերանք անզգամաց պատմեն [2]զչա-
3 րիս ։ Յամենայն տեղիս աչք Տեառն դի-
4 տեն զբարիս եւ զչարս ։ Բժշկութիւն
լեզուի ծառ կենաց . [3]եւ որ պահէն զնա՝
5 լցցի հոգւով ։ Անզգամն անգոսնէ զխրատ
հօր . իսկ որ պահէ զյանդիմանութիւն՝
խորագէտ է ։ [4]Ի յաճախել արդարութեան՝
զօրութիւն բազում, եւ ամպարիշտք ար-
6 մատաքի յերկրէ կորիցեն ։ Տունք արդա-
րոց զօրութեամբ բազմաւ . պտուղք ամ-
7 պարշտաց կորիցեն ։ Շրթունք իմաստ-
նոց [5]հաստատեալ են իմաստութեամբ,
8 սիրտք անմտաց ոչ են [6]անսխալք ։ Պա-
տարագք ամպարշտաց պիղծ են առաջի
[7]Աստուծոյ, ուխտք ուղղոց ընդունելի են
9 նմա ։ Պիղծ են առաջի Տեառն ճանա-
պարհք ամպարշտաց , իսկ որ երթայ
10 զհետ արդարութեան՝ սիրէ զնա ։ Խրատ
[8]անմեղին ճանաչի ի մերձաւորաց, իսկ
որ ատեայն զյանդիմանութիւն՝ վախճա-
11 նեսցին [4]անարգանօք ։ Դժոխք եւ կո-
րուստ յայտնի են առաջի Տեառն . զիա՞րդ
12 ոչ եւ սիրտք մարդկան ։ Ոչ սիրէ ան-
խրատն զյանդիմանիչս իւր , եւ ընդ ի-
13 մաստունս ոչ խօսեսցի ։ Սրտի բերկրե-
ցելոյ երեսք ծաղկին . եւ ոգի որ ի
14 տրտմութեան է՝ թախծեալ շրջի ։ Սիրտ
ուղիղ խնդրէ զիմաստութիւն . եւ բե-
րան անխրատից [9]տեղեկանայ չարեաց ։
15 Յամենայն ժամանակս աչք չարաց սպա-
սեն չարեաց , իսկ բարիքն հանդարտեն
16 յամենայն ժամ ։ Լաւ է փոքր բաժին
երկիւղիւ Տեառն , քան զգանձս մեծա-
17 մեծս [10]աներկիւղածութեամբ ։ Լաւ են
կոչունք բանջարեղէնք սիրով եւ շնոր-
հիւ , քան զուարակ ի մսրոյ՝ թշնամու-
18 թեամբ ։ Այր բարկացօղ նիւթէ զկռիւս .
իսկ երկայնամիտն [11]եւ զհանդերձեալսն
յածուցանէ ։ Այր երկայնամիտ շիջու-
ցանէ զդատաստանս , իսկ ամպարիշտն
19 առաւել եւս զրգռէ ։ Ճանապարհք վա-
տաց կցեալ են փշովք , իսկ ժրացն՝ վա-
20 րունք են ։ Որդի իմաստուն ուրախ առ-
նէ զհայր . որդի անմիտ արհամարհէ
21 զմայր իւր ։ [12]Միտք անմտի կարօտ է
հանճարոյ . այր իմաստուն ուղղորդ
22 գնայ ։ [13]Յապաղեն զխորհուրդս՝ որ ոչ
պատուեն զխորհրդակիցս ։ Ի սիրտս խոր-
23 հրդականաց հաստատի խորհուրդ . Եւ
ոչ հնազանդի նմա անզգամ . եւ ոչ ա-
սիցէ զխօսք ինչ եւ բարի հասարակաց ։
24 Ճանապարհ կենաց խորհուրդ իմաստ-
նոց , զի խորշեալ ի դժոխոց՝ փրկեսցի ։
25 Զտունս թշնամանողաց կործանէ Տէր ,
եւ հաստատէ զսահմանս որբոց եւ այ-
26 րեաց ։ Պիղծ է առաջի Տեառն խոր-
հուրդ անիրաւ . բանք սրբոց պարկեշտ
27 են ։ [14]Սատակէ զանձն իւր կաշառառուն ,
իսկ որ ատեայ զկաշառս՝ կեցցէ ։ [4]Ո-
ղորմութեամբ եւ հաւատովք՝ սրբին
մեղք . երկիւղիւ Տեառն խորշի ամե-
28 նայն ոք ի չարէ ։ Սիրտք արդարոց խո-
կան [15]զհաւատս , բերան ամպարշտի
[16]պատասխանի տայ զչարիս ։ Ընդունելի
են առաջի Տեառն ճանապարհք մարդոց
արդարոց . վասն նոցա եւ թշնամիք բա-
29 րեկամք լինին ։ Հեռի է Աստուած յամ-
պարշտաց . եւ աղօթից արդարոց լսէ ։
30 [17]Լաւ է սակաւիկ ինչ առնուլ արդարու-
թեամբ , քան զբազում արդիւնս աներ-
կիւղածութեամբ ։ Սիրտ առն խորհեսցի
զիրաւունս , զի յԱստուծոյ ուղղեսցին
գնացք նորա ։ Ակն որ տեսանէ զբարիս՝
ուրախ առնէ զսիրտ . համբաւ բարի
32 պարարէ [18]զոսկերս ։ Որ մերժէ զխրատ՝
ատեայ զանձն , որ պահէ զյանդիմանու-
33 թիւն՝ ստանայ զհանճար ։ Երկիւղ Տեառն
խրատ [19]եւ իմաստութիւն , եւ սկիզբն
փառաց պատասխանի արասցէ նմա ։

[1]Եբր. հաճոյ առնէ զգիտութիւն [2]Եբր. յիմարութիւն [3]Եբր. իսկ թիւրութիւն ի նմա՝ բեկումն ոգւոյ [4]Յեբր. պակաս [5]Եբր. սփռեն զգիտութիւն, իսկ [6]Կամ, այնպէս [7]Եբր. Տեառն, իսկ [8]Եբր. չար արոյ խոտորեն ի շաւղէ [9]Եբր. ճարակի յիմարութիւն ։ (15) Ամենայն աւուրք տառապելոյ չար են. իսկ սիրտ զուարթ ի խնջոյս է հանապազ [10]Եբր. խռովութեամբ [11]Եբր. ցածուցանէ զվէճ

[12]Եբր. Յիմարութիւն ուրախութիւն է պակասամտին, իսկ [13]Եբր. Յրուին գիտաւորութիւնք առ ի չգոյէ խորհրդոյ, իսկ ի բազմութեան խորհրդականաց հաստատեսցին ։ (23) Ուրախութիւն մարդոյ ի պատասխանի բերանոյ նորա , և բան յիւրում ժամու զի՞ բարի է ։ (24) Ճանապարհ կենաց ի վեր կոյս վասն իմաստնոյ, առ խորշելոյ ի դժոխոց ներքնոց ։ [14]Եբր. Խռովէ զտուն իւր որ տենչայ ագահութեան . [15]Եբր. տալ պատասխանի, իսկ [16]Եբր. բղխէ զչարիս ։ (29) Հեռի է Տէր [17]Եբր. Լոյս աչաց [18]Եբր. զոսկերս ։ (31) Ունկն որ լսէ զկշտամբանս կենաց՝ ի մէջ իմաստնոց ագցի ։ [19]Եբր. իմաստութեան, և սկիզբն փառաց՝ խոնարհութիւն

## ԳԼ. ԺԶ

1 Մարդոյ խոհ լինի գնել ի սրտի. եւ ի
2 Տեառնէ է պատասխանի լեզուի։ [1]Ա-
մենայն գործք խոնարհին յայտնի են ա-
ռաջի Աստուծոյ, եւ հաստատէ զոգիս
3 Տէր։ Յանձն առ Տէր զգործս քո, եւ
հաստատեսցին խորհուրդք քո։ [2]Որչափ
ի մեծութիւն հասանիցես՝ ի խոնարհու-
թեան կալ զանձն քո, եւ առաջի Տեառն
4 գտցես շնորհս։ Զամենայն ինչ գործեաց
Տէր վասն իւր, [3]իսկ ամպարիշտք յաւուր
5 չարի կորիցեն։ Պիղծ է առաջի Տեառն
ամենայն մեծամիտ. [4]որ ձեռնամուխ
լինի տարապարտուց՝ ոչ արդարասցի։
Սկիզբն ճանապարհի բարւոյ՝ գործելն
զարդարութիւն, եւ ընդունելի են Ա-
ստուծոյ աղօթք՝ քան մատուցանել պա-
6 տարագս։ Որ խնդրէ զՏէր՝ գտցէ զգի-
տութիւն արդարութեամբ հանդերձ, եւ
որ ուղղութեամբն խնդրեն զնա՝ գտցեն
7 զխաղաղութիւն։ Զի ամենայն գործք
Աստուծոյ արդարութեամբ են. ամպա-
8 րիշտ պահի աւուր չարի։ Լաւ է սա-
կաւիկ ինչ առնուլ երկիւղիւ Տեառն,
քան զգանձս մեծամեծս ամպարշտու-
9 թեամբ։ Սիրտ առն խորհեսցի [5]զիրա-
ւունս, զի յԱստուծոյ ուղղեսցին գնացք
10 նորա։ Մարգարէութիւն է ի շրթունս
թագաւորի, եւ ի դատաստանի մի՛ մո-
11 լորեսցի բերան նորա։ [6]Մէտ կշռոց է
արդարութիւն ի Տեառնէ, եւ գործք
12 նորա կշիռք արդարք։ Գարշելի է թա-
գաւորի որ առնէ զչարիս, զի արդա-
րութեամբ հաստատի աթոռ իշխանու-
13 թեան նորա։ Ընդունելի են թագաւորի
շրթունք արդարք, [7]զբանս ուղիղս սիրէ
14 Տէր։ Սրտմտութիւն թագաւորի հրեշ-
տակ մահու, եւ այր իմաստուն՝ ցա-
15 ծուցանէ զնա։ [8]Ի լոյս կենաց՝ որդի
թագաւորի, եւ ընդունելիք նորա իբ-
16 րեւ զամպ անագան։ Դայեակք իմաս-
տութեան՝ ցանկալի են քան զոսկի,
դայեակք հանճարոյ՝ ցանկալի են քան
17 զարծաթ։ Շաւիղք կենաց խոտորին ի
չարեաց, երկայնութիւն կենաց ճանա-
պարհք արդարութեան։ Որ ընդունի
զխրատ՝ ի բարիս եղիցի, եւ որ պահէ
զյանդիմանութիւն՝ իմաստնասցի։ Որ
զգուշանայ ճանապարհաց Տեառն՝ պահէ
զանձն իւր. որ սիրէ զկեանս՝ խնայեսցէ
18 ի բերան իւր։ Յառաջ քան զբեկումն՝ հա-
մարին թշնամանք, եւ նախ քան զգլո-
19 րումն՝ չարախօսութիւն։ Լաւ է հանդար-
տասիրան խոնարհութեամբ, քան զայն որ
20 բաժանէ զաւար ընդ թշնամանօք։ Որ
իմաստուն է յիրս՝ գտանէ զբարիս, եւ
21 որ յուսայ ի Տէր՝ երանելի է։ [9]Զիմաս-
տունս եւ զհանճարեղս՝ անմիտս կոչեն,
եւ որ քաղցր են բանիւք՝ աւելի եւս լսի-
22 ցեն։ Աղբեւր կենաց են միտք՝ որոց ունի-
23 ցին զնա. խրատ անմտաց՝ չար է։ Սիրտ
իմաստնոյ իմանայ որ ինչ յիւրմէ բերա-
նոյ, եւ ի շրթունս իւր կրեսցի զի-
24 տութիւն։ Խորիսխ մեղու՝ բանք
բարիք, [10]եւ քաղցրութիւն նորա բժշկու-
25 թիւն հոգւոյ։ Են ճանապարհք որ թուին
մարդոյ թէ ուղիղ իցեն, եւ կատարած
26 նոցա հայի յատակս դժոխոց։ Այր ի
վաստակս ջանայ անձին իւրում, [11]եւ
բռնադատէ իւր զկորուստ. իսկ թիւրն՝
27 ի բերան իւր կրէ զկորուստ։ Այր
անզգամ փորէ [2]անձին իւրում չարիս,

---

[1]Եբր. Ամենայն ճանապարհք մարդոյ սուրբ են յաչս իւր. այլ որ կշռէն զոգիս՝ Տէր է։ [2]Յեբր. պակասէ [3]Եբր. եւ զամպարիշտն եւս, յօր ձախողանաց [4]Եբր. Թէ և ձեռն ի ձեռն՝ մի՛ մնասցէ անպատիժ. (6) Ողորմութեամբ եւ ճշմարտութեամբ քաւի անօրէնութիւն, եւ երկիւղիւ Տեառն է յետս կալ ի չարէ. (7) Ի հաճել Տեառն ընդ ճանապարհս մարդոյ, զթշնամիս իսկ նորա հաշտեցուցանէ ընդ նմա. (8) Լաւ է սակաւիկ ինչ արդարութեամբ [5]Եբր. զճանապարհս իւր. այլ ի Տեառնէ [6]Եբր. Կշռորդք և կշիռք արդարութեան ի Տեառնէ. գործք նորա ամենայն քարինք մախաղի. (12) Գարշելի է թագաւորաց առնել չարիս, զի արդարութեամբ հաստատի աթոռ. [7]Եբր. եւ սիրեն զայն որ խօսի ուղիղ

[8]Եբր. Ի լոյս երեսաց թագաւորի կեանք, եւ հաճութիւն նորա իբրեւ զամպ է անագան անձրեւի. (16) Ստանալ զիմաստութիւն քանի՜ քաղցր է քան զոսկի. և ստանալ զհանճար ընտիր է քան զարծաթ. (17) Ճանապարհ ուղղոց է խոտորել ի չարէ. որ զգուշանայ ճանապարհի իւրում՝ պահէ զանձն. (18) Յառաջ քան զբեկումն՝ հպարտութիւն. եւ նախ քան զգլորումն՝ ամբարտաւանութիւն. (19) Լաւ է խոնարհել հոգւով ընդ հեզս, քան բաժանել զաւար ընդ հպարտս. [9]Եբր. Որ իմաստուն է սրտիւ՝ կոչի հանճարեղ. եւ քաղցրութիւն շրթանց յաւելցէ գիտութիւն. (22) Գգօնութիւն աղբեւր կենաց է՝ որոց ունիցին զայն, իսկ խրատ անմտաց յիմարութիւն է. (23) Սիրտ իմաստնոյ տանէ զգօն զբերան նորա, եւ ի շրթունս նորա յաւելցէ գիտութիւն. [10]Եբր. քաղցր են հոգւոյ եւ բժշկութիւն ոսկերաց. (25) Է ճանապարհ որ թուի ուղիղ յաչս մարդոյ, այլ կատարած նորա ճանապարհք մահու. [11]Եբր. զի բռնադատէ զնա բերան նորա

եւ ի վերայ շրթանց [1]իւրոց զանձէ հուր"։
28 Այր խորամանկ նիւթայ զչարիս . եւ [2]լապ-
տեր նենգութեան բորբոքէ չարեօք ,
29 եւ" քակէ զբարեկամս ։ Այր անօրէն
[3]փորձ փորձ առնէ զբարեկամաց , եւ
տանի զնոսա" ի ճանապարհս անբարիս ։
30 [4]Որ հաստատէ զաչս իւր եւ խորհի զկա-
մակորս , եւ վճէ շրթամբք իւրովք
զամենայն չարիս , այնպիսին է հնոց չա-
31 րեաց ։" Պսակ պարծանաց [5]ծերութիւն ,
եւ" ի ճանապարհս արդարութեան գտա-
32 նի ։ Լաւ է այր երկայնամիտ քան զհզօր .
[6]եւ այր որ ունի զիմաստութիւն՝ քան
զանդս մեծամեծս , եւ որ յաղթէ բար-
կութեան՝ քան որ առնուցու զքաղաք
33 հզօր ։ Անդրէն ի ծոց իւրեանց դառնայ
ամենայն ինչ անիրաւաց , այլ ի Տեառ-
նէ ամենեցուն իրաւունք են ։"

## ԳԼ. ԺԶ

1 Լաւ է պատառ մի համով խաղաղու-
թեամբ , քան զտունս լի զենլեօք [7]եւ
2 բարեօք" թշնամութեամբ ։ Ծառայ ի-
մաստուն տիրեսցէ [8]տերանց անմտաց",
3 եւ ընդ եղբարս բաժանեսցի մասն ։ [9]Որ-
պէս փորձի ի բովս արծաթ եւ ոսկի ,
4 նոյնպէս ընտրէ զսիրտս Աստուած ։ Չա-
րի հնազանդի լեզու անօրինաց , եւ ար-
դար ոչ հայի ի շրթունս սուտս ։ Հաւա-
տացելոյն ամենայն աշխարհ ընչիւք լի
5 է , անհաւատին եւ ոչ դանգ մի ։" Որ
կատակէ զաղքատով՝ բարկացուցանէ
զԱրարիչ նորա , եւ որ ոտն հարկանէ
կորուսելոյն՝ ոչ արդարասցի . [7]Իսկ որ
6 գթայն՝ ողորմութիւն գտցէ ։" Պսակ ծե-
րոց՝ որդիք որդւոց , պարծանք որդւոց՝
7 հարք իւրեանց ։ Ոչ վայելեն անզգամաց
շրթունք հաւատարիմք , եւ ոչ արդա-
8 րոց՝ շրթունք սուտք ։ [10]Վարձք շնորհաց
խրատ՝ որոց կրեն զնա, զի" ուր եւ դառ-
9 նայցէ՝ աջողեսցի ։ Որ ծածկէ զյանցանս՝
խնդրէ զբարեկամութիւն . իսկ որ ա-
տեայ զծածկելն , քակէ զբարեկամս եւ
10 զընտանիս ։ [11]Փշրեն զսիրտս իմաստնոց
սպառնալիք , իսկ անմիտն թէպէտ եւ
բազում գան ըմպէ՝ չառնու ի միտ ։"
11 Զհակառակութիւնս յարուցանէ ամենայն
չարակամ , իսկ [7]Տէր հրեշտակ անողորմ
12 [12]արձակէ ի վերայ նորա։ [13]Անկցի հոգ ի
սիրտ առն իմաստնոյ , եւ անմիտք խոր-
13 հին զչարիս ։" Որ հատուցանէ չար փո-
խանակ բարւոյ , չար ի տանէ նորա մի
14 պակասեսցէ ։ [14]Իշխանութիւն բանից տայ
սկիզբն արդարութեան . եւ առաջնորդ
լինի կարօտութեան՝ հակառակութիւն
15 եւ կռիւ ։" Որ արդար համարի զանի-
րաւն եւ անիրաւ զարդարն , պիղծ եւ
զարշելի են առաջի Տեառն երկոքին ։
16 Ընդէ՞ր գտանին [15]ստացուածք անմտի",
զի իմանալ զիմաստութիւն անմիտն ոչ
կարէ ։ [7]Որ բարձր առնէ զտուն իւր՝
խնդրէ զբեկումն . եւ որ կամակորէ յուսա-
17 մանէ , անկցի ի չարիս ։" Ցամենայն ժա-
մանակի [16]բարեկամք եղիցին քո , բայց
եղբարք՝ ի վիշտս եղիցին քեզ պիտոյ .
18 զի վասն այնորիկ իսկ ծնանին ։ Այր ան-
միտ կայթէ եւ խնդայ յորժամ երաշ-
19 խաւոր լինի" բարեկամի իւրոյ ։ Վնասա-
սէրն խնդայ ընդ կռիւ . որ բարձրացու-
ցանէ [17]զտուն իւր՝ խնդրէ զբեկումն ։
20 Խստասիրտն՝ բարեաց ոչ պատահէ . այր
յեղյեղուկ լեզուաւ՝ անկցի ի չարիս ։
21 [18]Սիրտ անզգամի ցաւ է կրելեաց իւրոց.
ոչ ուրախ լինի հայր ի վերայ որդւոյ
անխրատի , որդի իմաստուն՝ ուրախ առ-
22 նէ զմայր իւր ։" Սիրտ ուրախ բարեմոյն
առնէ , առն հոգածի՝ ցամաքեն ոսկերք ։
23 [19]Որ առնու կաշառ ի գոգ իւր տարա-
պարտուց՝ ոչ աջողին ճանապարհք նո-
րա . ամպարիշտ խոտորի" ի ճանապար-

---

[1] Եբր. Նորա որպէս հուր որ այրէ [2] Եբր. բան սարկուն [3] Եբր. խաբէ զընկեր իւր, և տանի զնա [4] Եբր. Փակէ զաչս իւր խորհել զնենգութիւն, եւ խածեալ զշրթունս իւր կատարէ զչարիս։ [5] Եբր. ալիք, ԵՒԵ [6] Եբր. եւ որ իշխէ ոգւոյ իւրում՝ քան որ առնուցու զքաղաք։ (33) Ի ծոց անդր ձգի վիճակ, եւ ի Տեառնէ ամենայն իրաւունք նորա։ [7]3Եբր. պակասէ [8] Եբր. որդւոյ որ յամօթ առնէ [9] Եբր. Բովք արծաթոյ, և հալոց՝ ոսկւոյ, այլ որ փորձէն զսիրտս՝ Տէր է։ (4) Որ չարն է՝ անսայ շրթանց անիրաւութեան, ստութիւն ունկն դնէ լեզուի խոտորելոյ։ [10] Եբր. Քար պատուական է պարգեւ յաչս տեառն նորա

[11] Եբր. Յանդիմանութիւն ազդէ մարդոյ իմաստնոյ, քան հարիւր հարուած յիմարի։ [12] Եբր. արձակի [13] Եբր. Հանդիպեսցի մարդոյ արջ որդեկորոյս, քան անմիտ ի յիմարութեան իւրում։ [14] Եբր. Իբրեւ զարձակումն ջրոյ՝ սկիզբն հակառակութեան , ապա մինչչեւ բորբոքեալ կռուոյ՝ ի բաց կաց։ [15] Եբր. ի ձեռս անմտի ստացուածք առ ի գնել զիմաստութիւն [16] Եբր. սիրէ բարեկամ. իսկ եղբայր վասն վշտաց է ծնեալ։ (18) Այր պակասամիտ տայ ձեռն՝ երաշխաւորել երաշխաւորութիւն վասն [17] Եբր. զդուռն [18] Եբր. Որ ծնանի զյիմար՝ կրէ տրտմութիւն, եւ հայր անզգամի չառնի ուրախ։ [19] Եբր. Առնու կաշառ ամպարիշտն ի ծոցոյ առ ի խոտորել

24 հայց արդարութեան ։ [1]Երեսք առն հան-
ճարեղի իմաստունք," աչք անմտի զխոյ-
25 րոք յածին ։ Բարկութիւն հօր որդի ան-
միտ, եւ ցաւք են ծնանելեաց նորա ։
26 Տուժել զայր արդար՝ չէ բարւոք. եւ ոչ
[2]նենգել զարդարն իշխանաց" յիրաւանց
27 վերայ ։ Որ խնայէ [3]բանս խիստ հանել"
իմաստուն է. այր երկայնամիտ՝ հան-
28 ճարեղ է ։ [4]Զանմիտն հարցեալ թէ իմաս-
տութիւն իցէ՞ ինչ, եւ իմաստութիւն
համարիցի՞. պապանձեցեալ՝ եւ համարե-
ցաւ թէ իմաստուն իցէ ։"

## Գլ. ԺԸ

1 [5]Պատճառս խնդրէ այր որ կամիցի քա-
կել ի բարեկամաց իւրոց. յամենայն ժա-
2 մանակի նախատ լիցի ։ Ոչ ինչ պիտոյ է
իմաստութիւն պակասամտի, զի առաւել
3 եւս վարի անզգամութեամբ ։ Յորժամ
հասանէ ամպարիշտ ի խորս չարեաց՝ ար-
համարհէ, բայց գան ի վերայ նորա ա-
4 նարգանք եւ նախատինք ։" Ջուր խոր
է խորհուրդ սրտի առն, գետ բղխեալ
5 [6]եւ աղբեւր կենաց" ։ Ակն առնուլ ամ-
պարշտի չէ բարւոք, [7]եւ ոչ զիրաւունս
խոտորել" արդարոյ ի դատաստանի ։
6 Շրթունք անզգամի հասուցանեն զնա ի
չարիս, եւ բերան նորա [8]յանդուգն՝ մահ
7 կոչէ ի վերայ" ։ Բերան անզգամի բե-
կումն է նմա, եւ շրթունք նորա որո-
8 գայթ անձին իւրում ։ [9]Զվատ կործանէ
երկեւղ. անձինք կանացեաց քաղցի-
9 ցեն ։ Որ զանձն իւր ոչ բժշկէ ի գործս
իւր, եղբայր է նա այնորիկ՝ որ անձին
10 առնիցէ ։ Ի մեծութենէ զօրութեան
յայտնի է անուն Տեառն. եւ առ նա ըն-
11 թացեալ արդարոց բարձրանան ։ Ստա-
ցուածք առն մեծատան քաղաք ամուր,
եւ փառք նորա մեծապէս հովանի ու-
12 նին" Յառաջ քան զբեկումն հպարտա-
նայ սիրտ առն, եւ յառաջ քան [10]զկոր-
13 ծիս իւր կորանայ" ։ Որ տայ պատասխանի
բան մինչչեւ լուեալ իցէ ինչ՝ անզգամու-
14 թիւն է նմա եւ նախատինք ։ [11]Զցասումն
առն հանդարտեցուցանէ ծառայ իմաս-
տուն", այլ առն նեղասրտի ո՞վ ունիցի
15 ժոյժ ։ Սիրտ իմաստնոյ ստանայ զհան-
ճար. ականջք իմաստնոց խնդրեն զխոր-
16 հուրդս ։ Տուրք մարդոյ ընդարձակեցու-
ցանեն զնա, եւ ընդ իշխանս նստու-
17 ցանեն զնա ։ [12]Արդար՝ անձին իւրում
չարախօսէ ի սկզբան բանից իւրոց, զի
յորժամ սկսանի ոսոխն յանդիմանի"
18 Զհակառակութիւնս ցածուցանէ [13]լուռ
լուռն", եւ ի մէջ բռնաւորաց ընտրէ
19 զվիճս ։ [14]Եղբայր յեղբօրէ օգնեալ՝ իբրեւ
զքաղաք ամուր, եւ զօրացեալ բարձ-
րացեալ իբրեւ զթագաւորութիւն հաս-
20 տատեալ" Ի պտղոյ բերանոյ այր յագե-
ցուցանէ զորովայն իւր, եւ ի պտղոյ
21 շրթանց իւրոց յագեսցի ։ Մահ եւ կեանք
ի ձեռս լեզուի, եւ որ [15]յաղթէ նմա"
22 կերիցէ զպտուղ նորա ։ Որ եգիտ կին
բարի՝ եգիտ շնորհս, եւ ընկալաւ [16]յԱս-
տուծոյ ուրախութիւն ։ Որ հանէ զկին
բարի՝ հանէ զբարիս. եւ որ ունի կին
23 շուն՝ անմիտ է եւ ամպարիշտ ։" Յողոք
բանս խօսի կայ տնանկն, եւ մեծա-
24 տունն յանդուգն տայ պատասխանի ։[17]Այր
ի բազմաց լկտութեամբ գնայ ։ Լաւ է
բարեկամ մերձաւոր՝ քան զեղբայր հե-
ռաւոր ։"

## Գլ. ԺԹ

1 Լաւ է [18]տգիտի որ գնայ միամտու-
թեամբ իւրով, քան անզգամին որ շա-
2 ղաւաշուրթն իցէ ։ Սակայն տգիտու-
թիւն անձին [19]իւրում ոչ է բարւոք, եւ

[1] Եբր. Առաջի երեսաց հանճարեղին իմաստութիւն, իսկ [2] Եբր. հարկանել զիշխանս [3] Եբր. զբան իւր [4] Եբր. Նա եւ անմիտն որ լռէ՝ համարեսցի իմաստուն, որ փակէ զշրթունս իւր՝ հանճարեղ է ։ [5] Եբր. Զցանկութիւն իւր խնդրէ որ զատուցանէ զանձն. ամենայն խրատու հակառակ կայ ։ (2) Ոչ ախորժի յիմաստութենէ յիմարն, այլ յայտ առնէ զոր ի սրտին է ։ (3) Ի գալ ամպարշտի, գայ եւ արհամարհանք, եւ ընդ նախատանաց՝ խայտառակութիւն ։ [6] Եբր. է աղբեւր իմաստութեան [7] Եբր. առ ի խոտորելոյ զիրաւունս [8] Եբր. կոչէ ի հարուած [9] Եբր. Բանք քսութեան են իբրեւ պատառք քաղցունք որ իջանեն մինչեւ ի շտեմարանս որովայնի ։ (9) Եւ որ լքանէ զանձն ի գործս իւր, եղբայր է այնորիկ որ կործանէ ։ (10) Աշտարակ հզօր է անուն Տեառն. անդր ընթանայ արդարն եւ լինի յապաստանի ։ (11) Ստացուածք առն մեծատան քաղաք զօրութեան նորա են, եւ իբրեւ պարիսպ բարձրացեալ ի միտս նորա ։ [10] Եբր. զփառս՝ խոնարհութիւն [11] Եբր. Ոգի առն տոկայ տկարութեան իւրում [12] Եբր. Որ սկսանի զդատ իւր՝ երեւի արդար. իբրեւ գայցէ ընկերն, քննեսցէ զնա ։ [13] Եբր. վիճակ [14] Եբր. Եղբայր վշտացեալ դժուարին է քան զքաղաք ամուր, եւ գժտութիւնն՝ իբրեւ զնիգս բերդի ։ [15] Եբր. սիրէն զնա՝ [16] Եբր. երախտիս ի Տեառնէ ։ [17] Եբր. Այր որ յաճախէ բարեկամս՝ աճէ կործանումն անձին, կամ, եղիցի մտերիմ. եւ գոյ բարեկամ հաւատարիմ քան զեղբայր ։ [18] Եբր. աղքատի [19] Եբր. գոլով

3 ¹ի ստիպել ոտից խուռն մեղանչէ"։ Ան-
զգամութիւն առն ապականէ զճանա-
պարհս նորա, եւ ²Աստուծոյ մեղ դնէ
4 ի սրտի իւրում։ Մեծութիւն յաւելու
բարեկամս բազումս, եւ աղքատն
5 ի բուն բարեկամէ անտի քակի։ Վկայ
սուտ առանց պատժի ոչ լիցի, եւ որ
մեղ դնէ տարապարտուց՝ ոչ ապրեսցի։
6 Բազումք ողոքեն զերեսս ³թագաւորաց,
եւ ամենայն չարակամ նախատ լինի
7 մարդկան։ Ամենայն որ ատեայ զեղբայր
աղքատ, հեռի լինի եւ ի սիրոյ նորա։
Խորհուրդ բարի՝ առ որս ճանաչիցեն
զնա մերձենայ, եւ այր իմաստուն գտցէ
զնա։ Որ կարի չար առնէ՝ կատարէ զչա-
րիս. եւ որ գրգռէ զբանս՝ ոչ ապրեսցի,
մանաւանդ որ վարէ զբանս որ ոչ
8 իւր իցեն"։ Որ ստանայ զհանճար՝ սիրէ
զանձն, եւ որ պահէ զիմաստութիւն՝
9 ⁴պահէ զբարիս"։ Վկայ սուտ առանց
պատժի ոչ լիցի. եւ որ բորբոքէ ⁵զչա-
րութիւն ընկերաց, եւ որ յուզէ զչա-
10 րութիւն" կորիցէ։ Ոչ վայելէ անզգա-
մի փափկութիւն, ⁶եւ. եթէ ծառայ սկսա-
11 նիցի հպարտութեամբ տիրել։ Այր ո-
ղորմած՝ երկայնամիտ լինի, եւ պար-
ծանք նորա զերիվերոյ լինին անզգա-
12 մաց։" Սպառնալիք թագաւորի նման
են մռնչելոյ առիւծու, զուարթութիւն
13 նորա իբրեւ զցօղ ի վերայ զալարոյ։ Ա-
մօթ հօր՝ որդի անմիտ. ⁷ոչ են սուրբ
14 ուխտք ի վարձուց վարձկանաց"։ Զտունս
եւ զստացուածս բաժանեն հարք որդ-
ւոց. եւ ի Տեառնէ պատշաճի կին ⁸առն։
15 Վատութիւն ունի զկանացին". անձն
16 գործատեաց՝ քաղցիցէ։ Որ պահէ զպա-
տուիրանն՝ պահէ զանձն իւր, եւ որ
արհամարհէ զճանապարհս իւր՝ կորիցէ։
17 Փոխ տայ ²Աստուծոյ՝ որ ողորմի տնան-
կին. ըստ տուրս նորա հատուսցէ նմա։
18 Խրատեա զորդի քո՝ զի ⁹այնպէս եղիցի
քեզ յոյս բարի. եւ ի թշնամանս մի՛
հպարտանար անձամբ քով. զի եթէ
հարկանես զնա գաւազանաւ՝ ոչ մեռա-
նի, բայց զանձն նորա փրկես ի մա-
19 հուանէ։ Այր չարաբար՝ բազումս տու-
ժեսցի, եւ եթէ եւս ժանտանայցէ՝ եւ
20 զանձն եւս դիցէ ի վերայ։ Լուր, որ-
դեակ, խրատու հօր քոյ", զի իմաստուն
21 եղիցիս ի վախճանի քում։ Բազում խոր-
հուրդք են ի սրտի առն, բայց խորհուրդ
22 ²Աստուծոյ յաւիտեան մնայ։ ¹⁰Պտուղ
առն՝ ողորմածութիւն իւր. լաւ է աղ-
քատ ¹¹արդար քան զմեծատուն սուտ"։
23 Երկեւղ Տեառն ի կենդանութիւն առն.
¹²իսկ աներկիւղն մոլորեալ ի գրուն
բնակեսցէ ի տեղիս ուր ոչ լիցի այցե-
24 լութիւն յաւիտենից։ Որ թաքուցանէ
զձեռս իւր ի ծոց իւր զուր, եւ ոչ ի
25 բերան իւր տարցի զնոսա։ Ի չարչարել
անզգամի՝ խորագիտագոյն եւս լինի ան-
մեղն". ապա թէ յանդիմանես զայր ի-
26 մաստուն՝ իմաստ առցէ զհանճար։ ¹³Որ-
դի որ անարգէ զհայր եւ մերժէ զմայր,
27 ¹⁴ամօթ կրէ եւ նախատ լիցի։ Որդի որ
թողուցու պահել զխրատ հօր, խորհի
28 զճառս չարեաց։ Որ յերաշխի առնու
զմանուկ անմիտ" թշնամանս առնէ ի-
րաւանց. եւ բերան ամպարշտաց կլանէ
29 ¹⁵զդատաստանս։ Պատրաստին անխրա-
տից տանջանք, նոյնպէս եւ պատիժք
անզգամաց։

## Գլ. Ի

1 Անառակ է գինի, եւ թշնամանօղ ար-
բեցութիւն, եւ ամենայն որ խառնակի
2 ընդ նոսա, չէ իմաստուն։ Ոչ ինչ է պա-
կաս սպառնալեաց թագաւորի ի ցասմանէ
առիւծու, եւ որ բարկացուցանէ զնա,
3 մեղս առնէ անձին իւրում։ Փառք են
առն խոտորել ի հայհոյութեանց, իսկ

¹Եբր. որ փութայն ոտիւք՝ սահի ²Եբր. Տեառն ³Եբր. առատաձեռնին, Յ-Ս, իշխանի, և ամենեքին բարեկամ լինին առն պարգեւատուի։ (7) Ամենայն եղբարք աղքատին ատեան զնա, առաւել եւս ընկերք նորա հեռանան ի նմանէ. զհետ երթայ բանից սնոտեաց։ ⁴Եբր. գտանէ բարիս ⁵Եբր. զստութիւն ⁶Եբր. ո՛րչափ եւս ծառայի տիրել իշխանաց։ (11) Զգօնութիւն առն յապաղէ զցասումն նորա, եւ փառք նորա՝ անտես առնել զյանցանս։ ⁷Եբր. կաթիլք հանապազորդ՝ կռիւ կնոջ ⁸Եբր. իմաստուն։ (15) Ծուլութիւն ածէ թմրութիւն ⁹Եբր. գոյ յոյս, եւ ի մահ նորա մի՛ լիցի նպաստ անձն քո։ (19) Յասումն մեծ ածէ տուգանս, զի եթէ զերծուցես զնա, տակաւին յաւելցես։ (20) Լուր խրատու, եւ ընկալ զյանդիմանութիւն ¹⁰Եբր. Յանկութիւն ¹¹Եբր. քան զայր ստութեան ¹²Եբր. եւ ննջէ յագեալ առանց հանդիպելոյ չարեաց։ (24) Արկանէ ծոյլ զձեռս իւր յաման, եւ ոչ դարձուցանէ զնա ի բերան իւր։ (25) Զոր ծաղրն առնէ՝ հարցես, եւ միամիտն առնիցի խորագէտ ¹³Յեբր. դ-ջ-ւ-է ¹⁴Եբր. որդի է որ ածէ ամօթ և նախատինս։ (27) Դադարեա, որդեակ իմ, ի լսելոյ զխրատ որ խոտորեցուցանէ ի բանից իմաստութեան։ (28) Վկայ անզգամ ¹⁵Եբր. զանիրաւութիւն

ամենայն անզգամ ընդ այնպիսիսն շա-
4 ղի։ [1]Թէպէտ եւ նախատի վատ՝ ոչ ա-
մաչէ, նոյնպէս եւ որ առնու ցորեան
5 փոխ ամարանի՛՛ Ջուր խոր է խորհուրդ
սրտի առն, եւ այր իմաստուն քամես-
6 ցէ զնա։ [2]Մեծ է մարդ՝ եւ պատուա-
կան այր ողորմած՛՛, բայց զայր հաւա-
7 տարիմ գործ է գտանել։ Որ շրջի [3]ա-
նարատ յարդարութեան՛՛ երանելի որ-
8 դիս թողցէ զկնի իւր։ Յորժամ թագա-
ւոր արդար նստիցի յաթոռ, [4]ոչ զառ-
նացցէ ընդդէմ աչաց նորա ամենայն չա-
9 րագործ։ Ո՞վ պարծեսցի սիրտ սուրբ ու-
նել, կամ ո՞վ համարձակեսցի ասել եթէ սուրբ
10 իցէ ի մեղաց։ Կշիռ մեծ եւ փոքր եւ
չափ կրկին՝ պիղծ են առաջի Աստուծոյ
երկոքեան, եւ խափանեսցին նոքա եւ
որ առնենն զնոսա. նա եւ ի գնացս իսկ
11 իւր խափանեսցի այր։ Երիտասարդ որ
ի սրբութեան է՝ ուղիղ են ճանապարհք
12 նորա՛՛ Ունկն լսէ եւ ակն տեսանէ,
13 Տեառն գործուած են երկոքեան։ [5]Մի՛
սիրեր զչար խօսել՝ զի մի՛ սատակես-
ցիս՛՛. բաց զաչս քո, եւ յագեսցիս հա-
14 ցիւ։ [6]Զչարն չար ասէ՝ որոյ գնոյն ստա-
ցեալ իցէ՛՛, եւ մատուցեալ յառաջ ա-
15 պա նախնի պարծի։ Է ոսկի եւ բազմու-
թիւն [7]անգոց. եւ անօթ պատուական՝
16 շրթունք գիտութեան։ Զերծ զհանդերձ
նորա՝ զի երաշխաւոր եղեւ օտարի, եւ
17 [8]ի հիւրութեան գրաւեաց զնա՛՛։ Քաղց-
րացաւ առն հաց ստութեան, եւ լցցի
18 բերան նորա կոպճով։ [9]Խորհուրդք մաօք
պատրաստեսցին, եւ պատերազմ իմաս-
19 տութեամբ մղեսցի՛՛ Որ յայտնէ զխոր-
հուրդս՝ գնայ նենգութեամբ. եւ ընդ
պատրողին շրթամբք իւրովք՝ մի՛ խառ-
20 նակեսցիս։ Որ հայհոյէ զհայր կամ զմայր՝
չիջցի լոյս [10]նորա, եւ բիբք աչաց նորա
21 զխաւար տեսցեն։ Մասն՛՛ փութացեալ
յառաջնումն՝ ի վախճանի ոչ օրհնեսցի։
22 Մի՛ ասիցես թէ առից վրէժ ի թշնամ-
ւոյն. այլ համբեր Տեառն, զի քեզ օգ-
23 նական լիցի։ Պիղծ է առաջի Տեառն
չափ կրկին, եւ կշիռ նենգութեան ոչ
24 է բարւոք առաջի նորա։ Ի Տեառնէ
ուղղին գնացք առն. եւ մահկանացուն
զիա՞րդ խելամուտ լիցի ճանապարհաց
25 իւրոց։ Որոգայթ է առն փութալ [11]եւ
յիւրոց ընծայս նուիրել. քանզի յետ ուխ-
26 տելոյն զղջումն լինի։ Ցրումն ամ-
պարշտաց՛՛ թագաւոր իմաստուն. եւ
27 արկանէ զնոքօք անիւ։ Լոյս Տեառն
շունչ մարդկան, որ քննէ զշտեմարանս
28 սրտի։ Ողորմութիւն եւ ճշմարտութիւն
պահապան թագաւորի, եւ [12]պատեսցեն
29 արդարութեամբ զաթոռ՛՛ նորա։ Զարդ
երիտասարդաց [13]իմաստութիւն, եւ փառք
30 ծերոց ալիք։ [14]Վէրք եւ հարուածք պա-
տահեն չարաց, եւ տանջանք՛՛ ի շտե-
մարանս որովայնի։

## ԳԼ. ԻԱ

1 Որպէս սահանք ջրոյ, նոյնպէս սիրտ
թագաւորի ի ձեռս [15]Աստուծոյ. ընդ որ
կամ կամի [16]հայեցուցանել՝ դարձուցանէ
2 զնա։ Ամենայն [17]այր երեւի անձին իւ-
րում արդար, բայց ուղղէ զսիրտս Տէր։
3 Գործել զարդարութիւն եւ խօսել զճշ-
մարտութիւն՛՛ հաճոյ է առաջի Տեառն
4 քան [18]զարեան զոհից։ Մեծամիտ է ի
թշնամանս այր խստասիրտ՛՛. զամբարամ-
5 պարշտաց՝ մեղք։ Խորհուրդ [19]համառօտ՝
սակայն՛՛ յառաւելութիւն, եւ ամենայն
փաղփաղուկ՝ սակայն ի նուաղութիւն։
6 [20]Որ կուտէ զգանձս ստութեամբ լեզուի՝
զհետ երթայ ունայնից, եւ հասանէ յո-
7 րոգայթս մահու։ Սատակումն ամ-
պարշտաց հասցէ՛՛, զի ոչ կամին առնել

---

[1] Եբր. Վասն ձմերայնոյ ոչ հերկէ ծոյլ. խնդրէ ի հունձս, եւ չիք։ [2] Եբր. Բազումք ի մարդկանէ հռչակեն իւրաքանչիւր զողորմածութիւն իւր [3] Եբր. յանարատութեան իւրում՝ արդար է։ [4] Եբր. ցրուէ աչօք իւրովք զամենայն չարիս։ (9) Ո՞ կարիցէ ասել եթէ՝ Սրբեցի զսիրտ իմ, սրբեցայ ի մեղաց իմոց։ (10) Քար եւ քար արդու եւ արդու, պիղծ են առաջի Տեառն երկոքեան։ (11) Նաեւ յարարս իւր ճանաչի մանուկ, եթէ սուրբ և եթէ ուղիղ իցեն գործք նորա։ [5] Եբր. Մի՛ սիրեր զքուն, զուցէ աղքատասցիս [6] Եբր. Չար, չար ասէ որ գնէն. [7] Եբր. ականց [8] Եբր. վասն կնոջ օտարի ա՛ռ գրաւ [9] Եբր. Դիտաւորութիւնք խորհրդով հաստատեսցին, եւ իմաստութեամբ մղեա զպատերազմ։

[10] Եբր. նորա յաղջամղջին խաւարի։ (21) Ժառանգութիւն [11] Եբր. ի նուիրել և յետ ուխտելոյն քննել։ (26) Ցրուէ զամպարիշտս [12] Եբր. հաստատեսցի արդարութեամբ աթոռ [13] Եբր. զօրութիւն նոցա, [14] Եբր. Վէրք կարեվէրք դեղ սրբիչ են ի չարիս. որպէս հարուածք ագդականք [15] Եբր. Տեառն [16] Յեբր. դ—ի—է [17] Եբր. Ճանապարհ առն ուղիղ է յաչս իւր, բայց որ կշռէ զսիրտս՝ Տէր է։ (3) Առնել զարդարութիւն եւ զիրաւունս [18] Եբր. զզոհ։ (4) Ամբարտաւանութիւն աչաց և հպարտութիւն սրտի [19] Եբր. աշխատասիրի՝ միայն [20] Եբր. Գանձ ստութեամբ լեզուի՝ է ունայնութիւն վայրապար. որ խնդրեն՝ խնդրեն զմահ։ (7) Նանութիւն ամբարշտաց սատակեսցէ զնոսա

8 զխրատուն ։ [1]Առ խոտորեալս՝ խոտորեալ
ճանապարհ առաքէ Աստուած , զի սուրբ
9 եւ ուղիղ են գործք նորա ։ Լաւ է բնա-
կել առ անկեան ի ներքոյ օդոյ , քան
ի բնակս անիրաւութեամբ եւ ի տան
10 խառնակութեան ։" Անձն ամպարշտի
ցանկանայ չարեաց , եւ ոչ գտցէ [2]յու-
11 մեքէ ողորմութիւն"։ Ի տուժել անխրա-
տի՝ խորագիտագոյն եւս լինի անմիտն ,
[3]առ իմաստութեան" հանճարեղն ըն-
12 դունի զգիտութիւն ։ Ի միտ առնու ար-
դար [4]զսիրտ ամպարշտաց , եւ ապակա-
13 նէն զամպարիշտս չարիք"։ Որ խնու
զլսելիս իւր զի մի լուիցէ տկարաց , եւ
նա կարդասցէ առ Տէր՝ եւ ոչ լուիցէ
14 նմա ։ Տուրք գաղտնիք՝ դարձուցանեն
զբարկութիւն . իսկ [5]որ խնայէ ի տուրս՝
15 սաստիկ բարկութիւն յարուցանէ"։ Ու-
րախութիւն արդարոց առնել զիրաւունս,
[6]եւ սուրբն՝ պիղծ թուի չարագործաց"։
16 Այր մոլորեալ ի ճանապարհէ արդարու-
թեան՝ ի ժողովս [7]հսկայից հանգիցէ ։
17 Այր կարօտեալ" սիրէ զուրախութիւն .
որ սիրէ զգինի եւ զձէթ [8]ի մեծութիւն ։
18 Ջնջանի" լինի արդարոյն անօրէնն , եւ
19 ուղղոց որ անցանէն զսահմանս ։ Լաւ է
բնակել յանապատի՝ քան ընդ կնոջ
[9]անզգամի՝ լեզուանւոյ եւ բարկացողի ։
20 Գանձ ցանկալի [10]հանգիցէ ի բերան" ի-
մաստնոյ , արք ստգտանք կլցեն զնա ։
21 [11]Ճանապարհ արդարութեան եւ ողոր-
մածութեան գտցէ զկեանս եւ զարդա-
22 րութիւն եւ զփառս ։ [12]Ի վերայ ամուր
քաղաքաց" ելանէ իմաստունն , եւ քա-
կեաց զամուրս յորս յուսացեալ էին [9]ամ-
23 պարիշտք ։ Որ պահէ զբերան իւր եւ
զլեզու՝ պահէ ի նեղութենէ զանձն իւր ։
24 [13]Խիստն եւ յանդուգն եւ հպարտն՝ ժանտ
կոչին , եւ որ պահէ ոխս՝ անօրէն է ։
25 Ցանկութիւնք սպանանեն զվատ", զի
ոչ յօժարեն ձեռք նորա գործել ինչ ։
26 [14]Ամպարիշտ ցանկայ զամենայն աւուրս
զցանկութիւն չարեաց", իսկ արդարն
27 ողորմի եւ տայ առանց խնայելոյ ։ Զո-
հաբերք ամպարշտաց պիղծ են [9]առա-
ջի Տեառն", քանզի անօրէնութեամբ իսկ
28 մատուցանեն զնոսա ։ Վկայ սուտ կո-
րիցէ . այր հլու՝ զգուշութեամբ խօսեսցի ։
29 Այր ամպարիշտ՝ յանդգնութեամբ
հարկանի ի գլուխ , իսկ ուղիղն ինքնին
30 իմանայ զճանապարհս իւր ։ [15]Ոչ է մար-
դոյ իմաստութիւն , ոչ արութիւն եւ ոչ
31 խորհուրդ առ Աստուած ։" Երիվար պատ-
րաստի յաւուր պատերազմի , բայց ի
Տեառնէ է [16]օգնականութիւն ։

ԳԼ . ԻԲ

1 Լաւ է անուն բարի քան զմեծութիւն
բազում , եւ քան զարծաթ եւ զոսկի՝
2 շնորհք բարիք ։ Մեծատուն եւ աղքատ
միմեանց պատահեցին , [17]երկոցունց ա-
3 յնելութիւն առնէ Տէր ։ Խորագէտ տե-
սեալ զչարադործն պատժեալ՝ հաստա-
տութեամբ խրատէ զանձն , եւ անմտաց
4 անցեալ առ նոքօք վնասեցան ։ Սկիզբն
իմաստութեան երկեւղ Տեառն , եւ" մե-
5 ծութիւն եւ փառք եւ կեանք ։ Տատասկ
եւ որոգայթ ի ճանապարհս թիւրաց , իսկ
որ զգոյշ կայ անձին իւրում՝ մերժեսցի
6 ի նոցանէ ։ [18]Նորոգումն երիտասարդի
ըստ ճանապարհաց իւրոց". նա՝ եւ յոր-
ժամ ծերասցի՝ ոչ[19]մերժեսցի ի նոցանէ ։
7 Աղքատք տիրեսցեն մեծատանց , եւ ծա-
ռայք տերանց իւրեանց փոխ տայցեն ։"
8 Որ սերմանէ զանզգամութիւն՝ հնձեսցէ
զչարիս , եւ [20]զհարուածս գործոց իւրոց
9 բովանդակեսցէ ։ Զայր զուարթ եւ զա-
ռատ սիրէ Աստուած . որ ողորմի տնան-

[1] Եբր. Յուղղամտութեան է ճանապարհ առն՝ մոլորի, իսկ որ սուրբն է՝ ուղիղ են գործք նորա։ (9) Լաւ է բնակել յանկեան տանեաց, քան առ կնոջ կագեցողի եւ ի մեծի տան ։ [2] Եբր. շնորհս յաչս նորա ընկերն նորա [3] Եբր. իբրեւ խրատի [4] Եբր. ի տուն ամպարշտաց , մինչ ամպարիշտք կործանին ի չարիս [5] Եբր. ընծայ ի գոգս՝ զցասումն սաստիկ [6] Եբր. իսկ տխրութիւն՝ որոց գործեն զանիրաւութիւն [7] Եբր. մեռելոց հանգիցէ ։ (17) Զբաւորի այր որ [8] Եբր. ոչ մեծասցի ։ (18) Փրկանք [9] Յեբր. պակասի [10] Եբր. եւ ձէթ ի տան [11] Եբր. Որ զհետ երթայ [12] Եբր. Ի քաղաք հզօրաց [13] Եբր. Այր հպարտ, գոռոզ կատակիչ է անուն նորա՝ որ գործէ ի ցասման հպարտութեան ։ (25) Ցանկութիւն ծուլի սպանանէ զնա [14] Եբր. Զօրն ողջոյն ցանկայ ցանկութիւն [15] Եբր. Չիք իմաստութիւն , եւ ոչ հանճար , եւ ոչ խորհուրդ հակառակ Տեառն ։ [16] Եբր. յաղթութիւն, կամ. փրկութիւն [17] Եբր. Որ առնէ զամենեսին Տէր է ։ (3) Խորագէտն տեսանէ զչարիս եւ թաքուցանէ զանձն , իսկ միամիտք անցանեն եւ տուժին ։ (4) Վարձան խոնարհութեան, եւ երկիւղի Տեառն՝ [18] Եբր. Կրթեա զմանուկն ի սկզբան ճանապարհի իւրոյ [19] Եբր. խոտորեսցի ի նմանէ։ (7) Մեծատունն տիրէ աղքատաց․ եւ որ առնու փոխ՝ ծառայ է փոխատուին ։ [20] Եբր. գաւազան բարկութեան նորա սպառեսցի ։ (9) Ակն բարի օրհնեսցի . զի տայ

կլի՛ ինքն կերակրեսցի, քանզի յիւրմէ
հացէ անտի ետ անանկի։ Զյաղթութիւն
եւ զպատիւ ստասցի որ տայ կաշառ,
10 բայց զոգիս առողացն սպանանէ։ Հան
զժանտն յատենէ՝ եւ ելցէ ընդ նմա եւ
հակառակութիւն. զի յորժամ նստիցի
11 յատենի՝ զամենեսեան անարգէ։ Սիրէ
Տէր զսիրտ սուրբ, եւ ընդունելի են
նմա ամենայն անարատք. շրթամբք
12 հովուէ թագաւոր։ Աչք Տեառն պահեն
զհանճար. եւ անգոսնէ [1]զբանս անօ-
13 րէնն։ Պատճառս գտանէ վատ եւ ասէ, Ա-
ռիւծ ունի զճանապարհս, եւ զանգս
14 հրապարակաց սպանողք։ Գուբ խոր է
բերան [2]անօրինի, եւ ատելեալն ի Տեառ-
նէ անկցի ի նա։ [3]Են ճանապարհք չարք՝
առաջի առն, եւ ոչ սիրէ դառնալ ի նո-
ցանէ. բայց դառնալ պարտ է ի թեւր
15 եւ ի չար ճանապարհէ։ Անմտութիւն բոր-
բոքեալ ի սիրտ երիտասարդի, գաւազան
16 եւ խրատ հեռի է ի նմանէ։ Որ զրպարտէ
զաղքատ՝ բազում առնէ իւր չարիս,
եւ որ տայ մեծատան կարօտութեամբ։
17 Բանից իմաստնոց մատո զունկն քո, եւ
լու՛ր բանից իմոց եւ հաստատեա զսիրտ
քո՝ զի գիտասցես զնոսա, թէ բարի են.
18 Եւ եթէ արկցես զնոսա ի սիրտ քում,
եւ զուարճասցին միանգամայն ի շրթունս
19 քո։ Զի եղիցի յոյս քո ի Տէր, եւ ցուց-
20 ցէ քեզ զճանապարհս իւր։ Եւ դու գրեա
զնոսա յանձին քում երեքկին, ի խոր-
հուրդս եւ ի գիտութիւն եւ ի հանճար։
21 Ահաւասիկ ուսուցանեմ քեզ զբանս
ճշմարիտս եւ գիտութիւն. հնազանդ
լինել պատասխանի տալոյ զբանս ճշմար-
տութեան որոց մատչիցին առ քեզ։
22 Մի՛ հարստահարեր զտնանկն, քանզի
աղքատ է. եւ մի՛ անարգեր զտնանկն
23 ի դրունս. Զի Տէր դատի զդատաստանս
նորա, եւ [4]փրկեսցէ անկապուտ զանձն
24 քո։ Մի՛ լինիր ընկեր առն բարկացողի,
եւ ընդ [5]բարեկամի զայրացողի մի՛ բնա-
25 կեր։ Գուցէ ուսանիցես զճանապարհս
նորա, եւ առնուցուս խեղդ ընդ անձն քո։
26 [6]Մի՛ տար զանձն քո յերաշխաւորու-
27 թիւն՝ ակն առնել երեսաց։ Զի եթէ
ոչ ունիցիս ուստի հատուցանիցես, [7]եւ
առնուցուն զանկողինն որ ընդ կողիւք
28 քովք կայցեն։ Մի՛ փոխեր զսահմանս
յաւիտենականս զոր եդին հարք քո։
29 [8]Զայր շոյտ եւ զգօյշ ի գործ իւր՝ թա-
գաւորաց առաջի պարտ է կացուցա-
նել, եւ ոչ կացուցանել առաջի արանց
խօթարտաց։

## ԳԼ. ԻԳ

1 Յորժամ նստիցես [9]յընթրիս ուտել ի
սեղան հզօրաց, իմանալով իմասջիր
որ ինչ առաջի [10]դնիցի, եւ ապա մխա-
2 ջիր զձեռն քո։ Գիտասջիր թէ այնպի-
սի ինչ եւ քեզ պարտ է պատրաստել։
3 Ապա թէ ագահագոյն իցես, մի՛ ցանկա-
նայցես խորտկաց նորա. զի այն իսկ
կեցեալ երթայ զկենացն ստութենէ։
4 Մի՛ ձգտիր՝ եթէ տնանկիցես՝ ընդ մեծա-
տան, այլ քո իմաստութեամբդ մերժեաց
5 ի նմանէ։ Եթէ հաստատեսցես զակն քո
ի վերայ նորա, ոչ ուրեք երեւի, զի
հանդերձեալ է նորա իւր թեւս որպէս
զարծուոյ, եւ դառնայ ի տուն նահա-
6 պետի իւրոյ։ Մի՛ ուտեր հաց ընդ առն
չարակն, եւ մի՛ ցանկանար կերակրոյ
7 նորա. [11]Զոր օրինակ թէ մազ ոք կլանէ՝

ի հացէ իւրմէ տնանկին։ (10) Հան զժանտն, եւ անցցէ հակառակութիւն. եւ դադարեսցին դատ եւ անարգանք։ (11) Որ սիրէ զսրբութիւն սրտի՝ ունի շնորհս ի շրթունս իւր. բարեկամ նորա՝ թագաւոր։ [1]Եբր. Նա զբանս անօրինին [2]Եբր. օտար կանանց [3]Եբր. (15) Յիմարութիւն կապեալ ընդ սիրտ մանկան, գաւազան խրատու հեռացուսցէ զայն ի նմանէ։ (16) Որ հանէ յանուագէն առ յաճախելոյ անձին, եւ տայ մեծատան՝ սպառքէն չքաւորի։

(17) Խոնարհեցո զունկն քո եւ լուր բանից իմաստնոց, եւ զսիրտ քո դիցես ի գիտութեան իմում. (18) Զի հաճոյական են, եթէ պահեսցես զնոսա ի սրտի քում, հաստատեսցին միանգամայն ի շրթունս քո։ (19) Զի եղիցի յոյս քո ի Տէր, ահա եսու գիտել քեզ այսօր։ (20) Ո՞չ ապաքէն գրեցի քեզ երեքկին ի խորհուրդս եւ ի գիտութիւն։ (21) Առ ի տալ քեզ գիտել զստուգութիւն բանից ճշմարտութեան, զի պատմեսցես զբանս ճշմարտութեան որոց հարցանիցեն զքեզ։

[4]Եբր. կողոպտեսցէ զանձինս որոց կողոպտեցին զնոսա [5]Եբր. առն զայրացողի մի՛ գնար [6]Եբր. Մի՛ լինիր յորոց հարկանեն զափ, յորոց երաշխաւոր լինին փոխ պարտուց. [7]Եբր. ընդէ՞ր [8]Եբր. Տեսե՞ր զայր ճարտար ի գործս իւր, առաջի թագաւորաց կացցէ, մի՛ կացցէ առաջի աննշանից։ [9]Եբր. ուտել ընդ իշխանի [10]Եբր. քո է. (2) Եւ դիր դանակ ի կոկորդի քում, եթէ տէր ես ախորժանաց։ (3) Մի՛ ցանկանայցես խորտկաց նորա, զի այն է հաց ստութեան։

(4) Մի՛ լինիր աշխատ լինել մեծատուն. ի բաց կաց ի խորհրդոյ քումմէ։ (5) Յածիցե՞ս զաչս քո յայն, եւ այն չէ ինչ, զի առնելով արասցէ իւր թեւս. իբրեւ զարծուի թռիցէ յօդս։ [11]Եբր. Զի որպէս հաշուի յանձին իւրում, այնպէս է. Կեր եւ արբ, ասիցէ քեզ, եւ սիրտ նորա չէ

8 այնպէս ուտէ եւ ըմպէ ։ Մի՛ մուծանի-
ցես զնա առ քեզ, եւ մի՛ ուտիցես զհաց
քո ընդ նմա, զի նողկացուցանէ զնա,
եւ ապականէ զբանս քո բարիս ։՟
9 Յականջս անզգամի ամենեւին մի՛ խօ-
սիր, զի մի՛ անգոսնեսցէ զիմաստուն բանս
10 քո ։ Մի՛ փոխեր զսահմանս յաւիտենա-
կանս, եւ ի ստացուածս որբոց մի՛ մտա-
11 նիցես. Զի որ փրկէն զնոսա [1]Տէր՝ հզօր
է, եւ դատի զդատաստանս նոցա ընդ քեզ։
12 Տուր ի խրատ զսիրտ քո, եւ զլսելիս
քո [1]պատրաստեա բանից իմաստութեան։
13 Մի՛ խնայեր խրատել զտղայ. զի
թէ հարկանես զնա գաւազանաւ՝ ոչ մե-
14 ռանի. Դու հարկանես զնա գաւազանաւ,
բայց զանձն նորա փրկես [2]ի մահուանէ ։
15 Որդեակ, եթէ իմաստուն լինիցի սիրտ
քո, [3]ուրախ արասցես եւ զիմ սիրտ ։
16 Եւ եթէ ընդերուզցեն զշրթունս քո ընդ
շրթունս իմ, միայն թէ ուղիղ իցեն ։՟
17 Մի՛ նախանձիցի սիրտ քո ընդ մեղա-
ւորս, այլ յերկեւղ Տեառն կանխեսջիր
18 զօրհանապազ. [4]Զի եթէ պահեսցես զնա,
եղիցի զաւակ քեզ, եւ յոյս քո մի՛ մեր-
19 ժեսցի։՟ Լուր, որդեակ, եւ լեր իմաս-
տուն, եւ ուղղեա [5]զխորհուրդս սրտի
20 քո ։ Մի՛ լինիր արբեցող, եւ մի՛ նա-
խանձիր ընդ հանգանակօղս մսոյ վա
21 ճառաց ։ Զի ամենայն արբշիռ եւ բո-
զամոլն աղքատասցի, եւ զգեցցի պա-
22 տառատունս ամենայն քնէած ։՟ Լուր,
որդեակ, հօր որ ծնաւ զքեզ, եւ մի՛
արհամարհեր զծերութիւն մօր քո ։
23 Զճշմարտութիւն ստասցիր, եւ մի՛ թո-
ղուր զիմաստութիւն եւ զխրատ եւ
24 զհանճար ։ [6]Բարւոք սնուցանէ հայր ար-
դար, եւ ի վերայ որդւոյ իմաստնոյ ու-
25 րախ լինի սիրտ նորա ։՟ Ուրախ լիցին
հայր եւ մայր քո ի քեզ, եւ խնդասցէ
որ ծնաւն զքեզ ։

26 Տուր ցիս, որդեակ, զսիրտ քո, եւ
աչք քո ճանապարհաց իմոց պահես-
27 ցեն ։ [7]Կարաս ծակ է տուն օտար՟, եւ
28 ջրհոր նեղ՝ օտարոտին ։ [8]Զի այնպիսին
վաղվաղակի սատակեսցի, եւ ամենայն
անօրէն սպառեսցի ։
29 Ո՞ւմ է վայ, ո՞ւմ է խռովութիւն, ո՞ւմ
են դատաստանք, ո՞ւմ դժնդակութիւնք
եւ վարանք՟, ո՞ւմ են վէրք տարապար-
տուց, ո՞յր [9]են կապուտակ ակնողիք ։՟
30 Ո՞չ ապաքէն այնոցիկ՝ որ յամենն ի գին-
ւոջ, եւ [10]զննեն ուր գինարբուք լինի-
31 ցին ։ Մի՛ արբենայք գինեաւ. այլ խօ-
սեցարուք ընդ մարդս արդարս, եւ խօ-
սեցարուք ընդ միմեանս ի հրապարակս ։
Ապա եթէ ի տաշտս եւ ի բաժակս ար-
ձակեսցես զաչս քո, յետոյ շրջիցիս մեր-
32 կագոյն քան զանդաստան ։ Եւ ի վախ-
ճանի իբրեւ զօձահար տարածանիցիս,
33 եւ իբրեւ իժի թոյնք սփռեսցին ։՟ Աչք
քո [1]իբրեւ տեսանիցեն զկին օտար,
[11]բերան քո յայնժամ խօսեսցի զթիւրս.
34 [12]Եւ անկեալ դնիցիս, ի սիրտ ծովու՝ եւ
իբրեւ զնաւավար ի մէջ բազում մրրկի՟։
35 Եւ ասիցես, թէ Հարկանէին զիս՝ եւ
ինձ ոչ ցաւէր, [13]այպն առնէին՟ զիս՝ եւ
ես ոչ գիտէի. Ե՞րբ [14]լիցի առաւօտ՝ զի
եկեալ խնդրեցից ընդ որում շրջէի՟։

## ԳԼ. ԻԴ

1 Որդեակ իմ, մի՛ նախանձիր ընդ չարս,
2 եւ մի՛ ցանկանայցես կալ ընդ նոսա. Զի
[15]ստութիւն խորհի սիրտ նոցա, եւ [16]ցաւս
3 խօսին շրթունք նոցա ։ Իմաստութեամբ
4 շինի տուն եւ հանճարով կանգնի. Եւ
խորհրդով լնուն շտեմարանք ամենայն
մեծութեամբ պատուականաւ եւ բար-
5 եօք ։ [17]Լաւ է իմաստուն քան զհզօր, եւ
հանճարեղ՝ քան զայն որ ունիցի զան-

---

ընդ քեզ։ (8) Զպատառն զոր կերար՝ փսխեսցես զայն, եւ ապականեսցես զբանս քո քաղցունս։ [1]Եբր. [illegible] [2]Եբր. ի դժոխոց [3]Եբր. ուրախ եղիցի եւ իմ սիրտ։ (16) Եւ ցնծասցեն երիկամունք իմ, ի խօսել շրթանց քոց ուղղութիւն։ [4]Եբր. Զի արդարեւ գոյ վախճան, եւ յոյս քո մի՛ հատցի։ [5]Եբր. ի ճանապարհ զսիրտ քո։ (20) Մի՛ լինիր ընդ որս ըմպեն գինի, ընդ որս մաշեն զմարմին իւրեանց, (կամ, շռայտին մսով,) (21) Զի արբեցողն եւ կերօղ աղքատասցի, եւ պատառատունս տացէ զգենուլ քնածութիւն։ [6]Եբր. Ցնծալով ցնծասցի հայր արդարոյ, որ ծնանի զիմաստուն՝ ուրախ եղիցի ի նմա։

[7]Եբր. Վիհ խոր է կին պոռնիկ, [8]Եբր. Նա եւս իբրեւ զգող դարանակալ լինի, եւ զդաւաճանս ի մարդիկ յաւելցէ։
(29) Ո՞ւմ վայ, ո՞ւմ եղուկ, ո՞ւմ կռիւք, ո՞ւմ տրտունջք [9]Եբր. է կարմրութիւն աչաց [10]Եբր. մտանեն խնդրել գինի խառնեալ։ (31) Մի՛ հայիր ի գինին յորժամ կարմրացեալ իցէ, տացէ ի բաժակի անդ զտեսիլ իւր, գնասցէ ուղղութեամբ։ (32) Ի վախճանի իւրում որպէս օձ խայթեսցէ, եւ իբրեւ զիժ հարցէ։ [11]Եբր. սիրտ [12]Եբր. Եւ լինիցիս որպէս որ անկեալ դնիցի ի սիրտ ծովու, եւ որպէս որ անկեալ դնիցի ի գլուխ կայմի [13]Եբր. զան հարկանէին [14]Եբր. զարթեայց, յաւելից խնդրել զնա միւսանգամ [15]Եբր. բռնութիւն [16]Եբր. զվնասս [17]Եբր. Այր իմաստուն ի զօրութեան, եւ այր գիտութեան

6 տակերաս մեծամեծս։ Առաջնորդու-
թեամբ միտ պատերազմ, եւ օգնակա-
7 նութեամբ խորհրդականաց սրտի։ Իմաս-
տութիւն եւ խորհուրդ բարեաց ի դրունս
8 իմաստնոց։ Իմաստունք ոչ խոտորին ի
բերանոյ Տեառն, այլ խորհին ի ժողովս
9 իշխանաց։ Անխրատից պատահէ մահ,
10 եւ մեռանի անզգամն ի մեղս։ Պղծու-
թիւն զայր ժանտագործ աղտեղի առնէ
յաւուր չարի եւ յաւուր նեղութեան՝
մինչեւ սատակեսցի։”
11 Փրկեա զորս ի մահ տանին, եւ [1]գնեա
12 զմահապարտս, եւ մի՛ խնայեր։ Ապա թէ
ասիցես, թէ Ոչ ճանաչեմ զնա՝ [2]եւ ոչ նա
զիս ճանաչէ, գիտասջիր՝ զի Տէր զսիրտս
ամենեցուն ճանաչէ. եւ որ ստեղծ զշունչ
ամենեցուն՝ նա գիտէ զամենայն”, եւ հա-
տուցանէ իւրաքանչիւր ըստ գործս իւր։
13 Կեր մեղր, որդեակ, զի բարի է,
եւ խորիսխ՝ զի քաղցրասցի կոկորդ քո։
14 Նոյնպէս եղիցի հանճար իմաստութեան
յանձին [3]քում. զի եթէ զայն գտանի-
ցես՝ եղիցի բարիաւ վախճան քո, եւ
15 յոյս քո մի՛ պակասեսցէ։ Մի՛ մատու-
ցաներ զամպարիշտն յարօտս արդարոյ,
եւ մի՛ խաբիր լրութեամբ որովայնի։”
16 Զի եթէ եւթն անգամ անկանիցի ար-
դարն՝ կանգնեսցի. իսկ ամպարիշտք
17 տկարասցին ի չարիս։ Եթէ կործանես-
ցի թշնամին քո՝ մի՛ ձեռն հարկանիր,
եւ ի գայթակղելն նորա մի՛ [4]հպարտանար։
18 Զի մի՛ հայեսցի Տէր, եւ ոչ հաճեսցի
ընդ այն, եւ դարձուսցէ զբարկութիւն
19 իւր ի նմանէ։ Մի՛ [5]խնդար ընդ չարա-
գործս, եւ մի՛ նախանձիր ընդ մեղա-
20 ւորս. Զի ոչ լինի [6]զաւակ չարաց, եւ
21 ճրագ ամպարշտաց շիջցի։ Երկի՛ր յԱս-
տուծոյ, որդեակ, եւ ի թագաւորէ, եւ
[7]ի միոջէ ի նոցանէ մի՛ ապստամբիցես։
22 Զի յանկարծակի պահանջիցին զամպա-
րիշտս”, եւ զպատուհաս երկոցունց
ո՞վ ծանիցէ։
23 Զայս ասեմ ձեզ իմաստնոցդ. [1]խելա-
մուտ լինել իրաւանց մի՛ ամաչէք.”
ակն առնել ի դատաստանի չէ բար-
24 ւոք։ Որ ասէ [8]զամպարիշտն՝ թէ Ար-
դար է”, անիծեալ ի ժողովրդոց լիցի եւ
25 ատելի յազգաց։ Իսկ որ յանդիմանեն,
նոքա լաւք երեւեսցին, եւ ի վերայ
նոցա եկեսցէ օրհնութիւն բարեաց։
26 [9]Շրթունք սիրեսցեն զպատասխանիս
բանից բարեաց. եւ որ պատասխանի
տայ բանս զիմաստարձութեան, պատ-
րաստէ անձին իւրում բանս հեշտա-
27 լոյ։ Պատրաստեա յելս զգործս քո. եւ
պատրաստեա ի դաստակերտս քո, եւ
գնա զու զկնի իմ, եւ շինեսցես զվերա-
28 արն” զտուն քո։ Մի՛ լինիր վկայ սուտ՝
ընկերի քում, եւ մի՛ [10]լայնիր շրթամբք
29 քովք։ Մի՛ ասեր՝ թէ Որպէս նա ընդ
իս գնաց, եւ ես ընդ նա գնացից, հա-
30 տուցից նմա՝ [11]որպէս եւ զրկեաց զիս։
Իբրեւ անդ մի այր անզգամ, եւ իբրեւ
31 այգի՝ այր պակասամիտ. Եւ եթէ թո-
ղուս զնա՝ խոպանանայ եւ մոլախոտէ
ամենեւին եւ լքանի, եւ քարինք որ-
32 մոյ նորա յատակին։ Յետոյ ասիցէ՝ թէ
Զղջացայ ես”, հայեցայ եւ ընտրեցի
33 զխրատ։ [1]Մինչեւ յե՞րբ անկեալ գնիս,
ով վատ, ե՞րբ ի քնոյ զարթիցես։” Սա-
կաւիկ ինչ ննջիցես, սակաւիկ ինչ նիր-
հիցես, [1]սակաւիկ ինչ դադարիցես”, սա-
կաւիկ ինչ ընդգրկիցես զձեռն քո [12]ի
34 վերայ լանջաց քոց։ Եթէ զայդ առնի-
ցես.” եկեսցէ իբրեւ զկարապետս աղ-
քատութիւն քո, եւ կարօտութիւն քո
իբրեւ [13]զարագոտն սուրհանդակ”։

պնդէ զզօրութիւն ։ (6) Զի հանճարով արասցես քեզ պատերազմ, եւ փրկութիւն ի բազմութեան խորհրդականաց ։ (7) Բարձր են յիմարի իմաստութիւնք. ի դրան ոչ բացցէ զբերան իւր ։ (8) Որ խորհի առնել չարիս, զնա այր չարախորհուրդ կոչեսցեն ։ (9) Խորհուրդ յիմարութեան՝ մեղք. եւ զարշանք մարդոյ՝ որ առնէն ծաղր ։ (10) Եթէ թուլասցիս յաւուր անձկութեան, անձուկ է զօրութիւն քո ։

[1] Եբր. [illegible] [2] Եբր. Ո՞չ ապաքէն որ կշռէն զսիրտս՝ նա իմանայ, եւ որ պահէ զանձն քո՝ նա ճանաչէ [3] Եբր. քում, եթէ գտեր. եւ է վախճան, և յոյս քո մի՛ հատցի ։ (15) Մի՛ լինիր, ով ամպարիշտ, դարանակալ յարօտ արդարոյ, եւ մի՛ աւերեսցես զդադար նորա ։ [4] Եբր. ցնծասցէ սիրտ քո [5] Եբր. սրտմտիր [6] Եբր. վախճան

[7] Եբր. մի՛ խառնիր զանձն ընդ խռովարարս ։ (22) Զի յանկարծակի յարիցէ կործանումն նոցա [8] Եբր. զամպարիշտն թէ Արդար ես [9] Եբր. Համբուրեսցէ զշրթունս որ տայն պատասխանի բանս ուղղութեան ։ (27) Պատրաստեա զգործս քո արտաքոյ, և յարդարեա զայն քո յանդի, և ապա յետոյ շինեսցես [10] Եբր. խաբեր [11] Եբր. ըստ գործոց իւրոց ։ (30) Ընդ արտ առն ծուլի անցի և ընդ այգի առն պակասամտի. (31) Եւ ահա բուսեալ էր ի նմա բովանդակ փուշ, ծածկեալ էր զերեսս նորա տատասկ, եւ որմն քարանց նորա յատակեալ. (32) Եւ տեսի ես, եդի զսիրտ իմ [12] Եբր. ի ննջել. (34) Եւ [13] Եբր. զայր սպառազէն

1 [1]Որդի որ զգուշանայ բանից՝ եղիցի
արտաքոյ կորստեան. զի ընդունելով
2 ընկալաւ զնա։ Մի՛ ինչ ստութիւն ասասցի
ի լեզուէ թագաւորի. եւ ոչ ելցէ խաբէ-
3 ութիւն ի լեզուէ նորա։ Սուսեր սուր է
լեզու թագաւորի, եւ ոչ մարմնեղէն, եւ
4 որ նմա մատնեսցի՝ խորտակի։ Զի եթէ
սրեսցի բարկութիւն նորա՝ յօդիւք հան-
դերձ սատակեսցէ զմարդիկ, եւ զոսկերս
նոցա կերիցէ, եւ այրեսցէ իբրեւ զբոց,
եւ իբրեւ զկէչ եղիցի ի բոյնս արծուեաց։
5 Ցիմոց բանից երկիր, որդեակ, եւ յորժամ
ընկալցիս զնոսա՝ ապաշխարեսջիր։"

## ԳԼ. ԻԵ

1 [2]Առակք Սողոմոնի անքնինք. զոր գրե-
ցին բարեկամքն Եզեկիայ արքային Հրէաս-
տանի։
2 Փառք Աստուծոյ ծածկեն զբան, փառք
3 թագաւորի պատուեն զհրամանս" Եր-
կինք բարձունք եւ երկիր խորին, սիրտ
4 թագաւորի անանց քննելոյ։ [3]Փորձ սես
պանփորձ արծաթոյ, եւ սրբելով սրբի
5 ամենայն։ Սատակեա՛ զամպարիշտս
յերեսաց թագաւորի, եւ [4]ուղղեսցի ար-
6 դարութեամբ աթոռ նորա։ Մի՛ հպար-
տանար առաջի թագաւորի, եւ մի՛ ի
7 տեղիս մեծամեծաց մտանիր. Զի լաւ է
քեզ՝ թէ ասիցէ ոք, Ի վեր առ իս մա-
տիր, քան թէ կորանայցես առաջի
8 [5]հզօրի։ Զոր տեսին աչք քո՝ խօսեաց.
մի՛ յանդուգն անկանիցիս ի մարտ, զի
9 մի՛ յետոյ զղջանայցես։ Յորժամ նա-
խատիցէ զքեզ բարեկամ քո, խոյս տուր՝
մի՛ արհամարհեր. գուցէ նախատիցէ
10 զքեզ բարեկամն. Եւ թշնամութիւն եւ
մարտ քո ոչ մեկնիցի. այլ լինիցի քեզ
հանգոյն մահու։ Շնորհք եւ բարեկա-
մութիւն ազատք են, հաստատեա զնո-
սա ի քեզ՝ զի մի՛ նախատ լինիցիս. եւ
պահեա զժամանակս քո հաշտութեամբ։
11 Ոսկի խնձոր ընդ սարդիոն յեռեալ, այն-
12 պէս է խօսել բանս իմաստունս։ Ի գինդ
ոսկի սարդիոն պատուական յեռեալ,
բան իմաստուն յունկնդիր լսելիս։
13 Որպէս ձիւնաբեր ամարայնի տօ-
թագելոց օգնական է, նոյնպէս եւ հրեշ-
տակ հաւատարիմ որոց առաքեցին զնա,
14 զանձինս յուսացելոց իւրոց շահի։ Որ-
պէս հողմք եւ ամպք եւ անձրեւք սաս-
տիկք", նոյնպէս են եւ որ պարծին ի
15 սուտ տուութեան։ Ցերկայնմտութենէ՝
[6]յաջողութիւն թագաւորի, լեզու ար-
16 ձակ" փշրէ զոսկերս։ Մեղր յորժամ
գտանիցես, որդեակ, չափով կերիջիր,
17 գուցէ յագիցիս եւ փսխիցես. Մի՛ կարի
յաճախեր ոտիւք քովք առ բարեկամ,
գուցէ յագիցի քեւ եւ ատիցէ զքեզ։
18 Իբրեւ [7]տուսեր եւ սլաք սրեալ, նոյն-
պէս եւ այր որ վկայէ զբարեկամէ իւրմէ
19 վկայութիւն ստութեան. [8]Ճանապարհք
չարի եւ ոտք անօրինի կորիցեն յա-
20 ւուր չարի" Որ հանէ զպատճան յաւուր
ցրտոյ, [9]որպէս քացախ վիրի անօ-
գուտ է, նոյնպէս հասեալ ցաւք մարմ-
նոյ սրտմտեցուցանեն զսիրտ։ Իբրեւ ցեց
հանդերձի եւ որդն փայտի, նոյնպէս
տրտմութիւն վնասակար է սրտի առն։"
21 Եթէ քաղցեալ է թշնամին քո՝ կերակ-
րեա զնա, եւ եթէ ծարաւի՝ տուր նմա
22 ըմպել։ Զայս իբրեւ արասցես՝ կայծակունս
հրոյ կուտեսցես ի վերայ գլխոյ նորա, եւ
23 Տէր հատուսցէ քեզ ՚բարութիւն։ Հողմ
հիւսիսոյ զամպս յարուցանէ, եւ երեսք
24 լիրբք զլեզու գրգռեն։ Լաւ է բնակել առ
անկեան ի տանիսոյ, քան ընդ կնոջ [10]բամ-
25 բասողի ի տան միում"։ Որպէս ջուր ցուրտ
անձին ծարաւոյ ախորժելի է, նոյնպէս
աւետիք բարեաց յերկրէ հեռաստանէ։
26 [11]Որպէս թէ ոք զակն աղբեր խնուցու-

---

[1] Ոմն. զգոյշ [2] Ոմն. Սոքա են առակք Սողոմոնի, զոր հարին ի գրի արք Եզեկիայ արքային Յուդայ։ (2) Փառք Աստուծոյ ծածկել զբան, իսկ փառք թագաւորի՝ քննել զբան։ [3] Ոմն. Բարձ զկղկղանս արծաթոյ, եւ ելցէ անօթ ոսկերչին։ (5) Բարձ [4] Ոմն. հաստատեսցի [5] Ոմն. հզօրի զոր տեսին աչք քո։ (8) Մի՛ երթիցես ի կռուել վաղվաղակի. գուցէ չգիտիցես զինչ առնել ի վախճանի նորա՝ յամօթ առնել զքեզ ընկերի քո։ (9) Զմարտ քո մարտիր ընդ ընկերի քում, եւ զգաղտնիս այլոց մի՛ հաներ ի վեր. (10) Գուցէ կշտամբեսցէ զքեզ որ լսէն. եւ նախատինք քո մի՛ դարձցին։ (11) Խնձորք ոսկիք ի դարանս սարդիոնի՝ բանք ասացեալք ի դէպ ժամանակի։ (12) Գինդ ոսկի և մանեակ յագնիւ ոսկւոյ, յանդիմանութիւն իմաստնոյ յունկնդիր լսելիս։ (13) Որպէս զովութիւն ձեան յաւուր հնձոց, նոյնպէս հրեշտակ հաւատարիմ որոց առաքեն զնա, եւ զանձն Տեառն իւրոյ զուարթացուցանէ։ (14) Որպէս ամպ եւ հողմ՝ առանց անձրեւի [6] Ոմն. հաւանեսցի իշխան, լեզու կակուղ [7] Ոմն. ուռն եւ սուսեր [8] Ոմն. Ատամն փշրեալ եւ ոտն խախտեալ է վստահել յայր խաբեբայ յաւուր նեղութեան։ [9] Ոմն. եւ քացախ ի վերայ բորոտի, այնպէս որ երգէ երգս սրտի թախծելոյ։ [10] Ոմն. կագեցողի ի մեծի տան [11] Ոմն. Որպէս աղբեւր պղտորեալ եւ ակն ապականեալ, այնպէս ՚արդար որ անկանի

եւ զգնացս ջուրց ապականիցէ, նոյն-
պէս աղտեղծ է արդարոյ անկանել՚ առա-
27 ջի ամպարշտի։ Մեղր շատ ուտել չէ
բարւոք, [1]բայց յարգել պատուէ զբանս
28 պատուականս՚։ Որպէս քաղաք կործա-
նեալ ի պարսպաց, նոյնպէս եւ այր [2]որ
ոչ խորհրդով ինչ գործիցէ՚։

ԳԼ. ԻԶ

1 Որպէս ձիւն ամարայնի եւ անձրեւ ի
հունձս, նոյնպէս ոչ յարգոյ՝ անզգամի
2 պատիւ։ Որպէս թռչունք եւ ճնճղուկք
թռանին, նոյնպէս անէծք զուր ումեք
3 ոչ եկանեն։ Որպէս մտրակ ձիոյ եւ
խթան իշոյ, նոյնպէս եւ գաւազան [3]ազ-
4 գի անմտի։ Մի՛ տար պատասխանի
անզգամի ըստ նորա անզգամութեանն,
5 զի մի՛ լինիցիս նմանօղ նմա։ Այլ տուր
նմա պատասխանի ըստ անզգամութեան
նորա, զի մի՛ իմաստնագոյն երեւեսցի
6 յանձն իւր։ [4]Ի ճանապարհաց իւրոց
նախատինս առնէ՚ որ առաքէ զբան ի
7 ձեռն [5]անմիտ հրեշտակի։ Կարճեա
զգնացս ոտից եւ զառակս ի բերանոյ
8 անզգամի՚։ Որ գնէ քար ի պարսատիկս՝
նման է այն որ գնէ պատիւ անմտի։
9 [6]Փշալից լինին ձեռք արբեցողի, եւ ծա-
10 ռայութիւն ի ձեռս անզգամի։ Բազում
ծուփս ծփին ամենայն մարմինք անզգա-
մաց, զի խորտակին յիմարութիւնք նո-
11 ցա՚։ Որպէս շուն յորժամ դառնայ ի
փսխած իւր [7]եւ ատելի լինի, նոյնպէս եւ
անզգամն իւրովք չարեօք՝ յորժամ դառ-
նայցէ անդրէն ի մեղս իւր։ Է ամօթ որ
ածէ զմեղս, եւ է ամօթ որ ածէ զփառս
12 եւ զշնորհս։ Տեսի՚ այր յանձն իւր պան-
ծացեալ թէ իմաստուն իցէ, բայց յոյս
13 զայր յանզգամն քան ի նմա։ [8]Զվատ
յորժամ յուղի առաքեն՝ ասէ, Առիւծ
ունի զճանապարհս եւ զհրապարակս
14 սպանօղք՚։ Որպէս դուռն որ շրջի ի
ծղխնւոջ, նոյնպէս եւ վատ ի մահիճս
15 իւր։ Թաքուցանէ վատ զձեռս իւր ի
ծոց իւրում, եւ ի բերան իւր դանդաղի
16 տանել։ Իմաստնագոյն թուի անձին իւ-
րում վատ, քան [9]զայն որ զմեծութեան
17 առ նախս բերիցէ՚։ Որպէս որ բուռն հար-
կանիցէ զշան [10]ձեռոյ, նոյնպէս եւ մարդ
18 որ անկանի յայլոց դատաստան։ Որպէս
փորձիչք որ ընդհարկանեն բանս ի մարդ-
կանէ, եւ որ փոզփողէ ընդդէմ բանից՝
19 նախ նա ընկճի՚։ Նոյնպէս ամենեքեան որ
դարանակալ լինին բարեկամաց իւրեանց.
եւ [11]յորժամ յանդիմանիցին՚ ասեն, Մեք
20 ընդ խաղ արարաք։ [12]Ի բազում փայտից
զուարթանայ հուր, եւ ուր ոչ գոյ երկ-
21 միտ՝ դադարէ կռիւ։ Կրակարանք՚ կայ-
ծակաց եւ փայտ հրոյ, եւ այր բան-
22 սարկու առ ի յուզել զկռիւ։ Բանք սու-
տակարապատաց [13]կակուղ են, բայց սր-
23 կանեն ի շտեմարանս մարմնոյ։ Որ տայ
արծաթ նենգութեամբ, իբրեւ ընդ խե-
ցի համարեալ է. շրթունք ողորկք ծած-
24 կեն զսիրտ տրտմագին։ Շրթամբք
իւրովք յայտնի առնէ ամենայն որ լայ
զթշնամի՚, եւ ի սրտի իւրում նիւթէ
25 զնենգութիւն. Եթէ [14]աղաչիցէ զքեզ
թշնամին, եւ ի ձայն բարձր աղերսիցէ՚,
մի՛ հաւատար նմա. զի եւթն չարիք
26 կան ի սրտի նորա։ [15]Որ խղխայթէ
զթշնամութիւն, յայտ առնէ զնենգու-
թիւն. ուզանէ զմեղս իւր բանգէտ
27 յատենի՚։ Որ փորէ խորխորատ ընկերի
իւրում՝ ինքն լցցէ զնա, եւ որ գլէ վէմ՝
28 յանձն իւր գլեսցէ։ Լեզու սուտ՝ ատեայ
[16]զճշմարտութիւն, բերան անզգայ՝
գործէ խռովութիւնս՚։

ԳԼ. ԻԷ

1 Մի՛ պարծիր առ վաղիւն, զի ոչ գի-
2 տես զինչ ծնանիցի [11]քեզ վաղիւն։ Գո-

[1] Ոմն. Եւ ոչ փառք՝ ի խնդիր լինել փառաց [2] Ոմն. որոյ չիք պատուէր ազգոյ իւրում [3] Ոմն. թիկանց [4] Ոմն. Յապաւէ զտա եւ կրէ զնա [5] Ոմն. անմտի։ (7) Որուն կաղի ղեղեւին, եւ առակք ի բերան անզգամի։ [6] Ոմն. Որպէս փուշ որ մտանէ ի ձեռս արբեցելոյ, նոյնպէս առակք ի բերան անմտաց։ (10) Մեծ է որ ստեղծն զամենայն, եւ որ տայ վարձս անմտին, եւ տայ վարձս անօրինաց։ [7] Ոմն. Նոյնպէս յիմարն որ կրկնէ զյիմարութիւն իւր։ (12) Տեսե՞ր [8] Ոմն. Ասէ ծոյլ, Առեւծ է ի ճանապարհի, առեւծ ի մէջ հրապարակաց։

[9] Ոմն. զեւթանս որ տան պատասխանի հանճարոյ [10] Ոմն. ականջէ, նոյնպէս եւ անցորդ որ խառնէ զանձն ի կռիւ որ չէ իւր։ (18) Որպէս որ մոլեգնեալ արձակէ կայծակունս, նետս եւ մահ, [11] Յն. դադարէ [12] Եբր. Ի սպառել փայտից՝ շիջանի հուր, եւ ուր ի չգոյէ բանսարկուի՝ լռէ կռիւ։ (21) Ածուխ [13] Եբր. պատառք քաղցունք որ իջանեն մինչեւ ի շտեմարանս որովայնի։ (23) Արծաթ կղկղանաց ծեփեալ ի խեցի, նոյնպէս շրթունք ողորկք եւ սիրտ չար։ (24) Շրթամբք իւրովք յայտ առնէ որ ատէն [14] Ոմն. քաղցրացուցանէ զբարբառ իւր [15] Ոմն. Ծածկել ծածկէ զանձն ատելութիւն ի նենգութեան, սակայն յայտնի լինի չարութիւն նորա ի ժողովի։ [16] Ոմն. զորս վիրաւորեաց, կամ, զորս վիրաւորեցին զնա, եւ բերան ողորկ գործէ կորուստ։

վնասէ զքեզ ընկերն՝ եւ մի՛ քո բերան,
3 օտարին՝ եւ մի՛ քո շրթունք։ Քար ծանր
է, եւ աւազ դժուարին առ ի բառնալ.
բայց բարկութիւն անզգամի ծանրագոյն
4 է քան զերկոսեան։ Անագորոյն է սրտմտու-
թիւն եւ սաստիկ է բարկութիւն, [1]այլ
5 նախանձ եւ ոչ ինչ ժուժկայէ՛։ Լաւ
է յայտնութիւն յանդիմանութեան քան
6 զբարեկամութիւն ի ծածուկ։ [2]Լաւ են
հարուածք բարեկամի քան զկամակոր
7 համբոյրս թշնամւոյ՛։ Անձն յագեալ
զխորիսխ [3]եւ զմեղր՛ արհամարհէ, բայց
անձին կարօտելոյ եւ դառն իբրեւ քաղցր
8 թուի։ Որպէս թռչուն [4]որ թռանի՛ ի
բունոյ իւրմէ, նոյնպէս եւ մարդ [4]ստրկա-
նայ՝ յորժամ օտարանայցէ՛ յիւրմէ տեղ-
9 ւոյ։ [5]Իւղով եւ խնկով եւ գինւով զուար-
ճանայ սիրտ, եւ բեկանի ի սրտմտութե-
10 նէ անձն՛։ Զբարեկամ քո եւ զբարեկամ
հայրենի մի՛ թողուր. եւ ի տուն եղբօր
քո մի՛ մտաներ [6]թշուառացեալ. լաւ է
բարեկամ մերձաւոր քան զեղբայր ի հե-
11 ռաստանէ բնակեալ։ Իմաստուն լեր,
որդեակ, [7]զի ուրախ լիցի սիրտ քո, եւ
12 դարձո ի քէն զբանս նախատանաց՛։ Խո-
րագէտն ի գալ չարեաց զօղեայ, եւ
անզգամք ընդ առաջ երթեալ ի տուժս
13 անկցին։ Ջերծ [3]ի նմանէ զհանդերձն նո-
րա, զի [8]անց թշնամանագիրն. քանզի
14 նա զայլոյն ապականէր՛։ Որ գովէ զբա-
րեկամ [9]ընդ առաւօտս բարձր ձայնիւ՝
[10]քան զանիծանողն ոչ ինչ առաւել համա-
15 րեսցի։ Կաթիլ հանէ զմարդ ի տանէ իւր-
մէ յաւուր ձմերայնոյ, նոյնպէս եւ կին
16 անզգամ ի տանէ իւրմէ գայ։ Հիւսիս
հողմ է հիւսիսի, բայց անուամբ աջոյ
17 կոչի՛։ Երկաթ զերկաթ [11]խարտէ, եւ այր
18 [11]զրգռէ զերեսս ընկերի։ Որ [12]անկէ թզե-
նի՝ կերիցէ զպտուղ նորա, եւ որ պա-
19 հէ զտէր իւր՝ պատուեսցի։ [13]Որպէս ոչ
են նման երեսք երեսաց, նոյնպէս եւ
ոչ սիրտք մարդկան՝ միմեանց նման են՛
20 Դժոխք եւ կորուստ անյագ են, նոյն-
պէս եւ աչք [14]ագահ մարդկան. պիղծ է
առաջի Տեառն որ արձակէ զաչս, եւ
21 անխրատք եւ յոխք լեզուաւ՛։ Փորձ
արծաթոյ եւ ոսկւոյ ի բովս, եւ այր
22 փորձի ի բերանոյ գովչաց իւրոց։ [15]Սիրտ
անօրինի խնդրէ զչարիս, եւ սիրտ ու-
ղիղ խնդրէ զգիտութիւն։ Եթէ հարկա-
նես զանզգամն ի մէջ ատենի եւ անար-
գես զնա՛, ոչ մերժես զանզգա-
23 մութիւնն ի նմանէ։ Խելամտութեամբ
խելամուտ լիջիր [16]անձանց խաշանց քոց,
եւ հաստատեսցես զմիտս քո ի վերայ
24 երամակաց քոց. Զի ոչ յաւիտեան է
առն այժմ [17]եւ զօրութիւն եւ իշխանու-
թիւն, եւ ոչ տուեալ են նմա ազգաց
25 յազգս։ Խնամ կալ բանջարոյ ի դաշտի,
եւ հնձեսցես խոտ. եւ ժողովեսցես զխոտ
26 զալար, Զի եղիցին քեզ ոչխարք ձոր-
ձորերք. զարմանեա զդաշտս՝ զի եղի-
27 ցին քեզ զառինք։ Որդեակ, յինէն ու-
նիս զպատգամս զօրաւորս ի կեանս տան
քո եւ ի կեանս բարեկամաց քոց՛։

ԳԼ. ԻԸ

1 Փախուցեալ է ամպարշտին առանց ու-
րուք հալածելոյ, իսկ արդարն՝ իբրեւ
2 զառեւծ յանձն ապաստանէ։ Վասն մե-
ղաց [18]ամպարշտաց դատաստանք յա-
ղին, եւ այր խորագէտ շիջուցանէ զնո-
3 սա։ Հզօրն առ ամպարշտութեան իւ-
4 րում զրպարտէ զանանկս։ Որպէս անձ-
րեւ սաստիկ եւ անշահ, նոյնպէս եւ որ
թողուն զօրէնս, եւ գովեն զամպարշտու-
թիւն. իսկ որ սիրեն զօրէնս՝ պատեն
5 զինքեանս պարիսպ՛։ Արք չարք ոչ

---

[1]Եբր. եւ ո՞ կայցէ առաջի նախանձու [2]Եբր. Հաւատարիմք են հարուածք բարեկամի, իսկ համբոյրք թշնամւոյ առատեն։ [3]Եբր. գոլորէ [4]Եբր. որ թափառի [5]Եբր. Եւղ եւ խունկ ուրախ առնեն զսիրտ, եւ քաղցրութիւն բարեկամի ի մտերիմ խորհրդոյ։ [6]Եբր. յաւուր նեղութեան քո [7]Եբր. եւ ուրախ արա զսիրտ իմ, եւ տաց պատասխանի բանից որոյ նախատէն զիս [8]Եբր. երաշխաւոր եղեւ օտարի, եւ վասն կնոջ օտարի առ գրաւ նորա [9]Եբր. կանխելով ընդ [10]Եբր. անէծք համարեսցի նմա։ (15) Կաթիլ հանապազորդ յաւուր անձրեւի, եւ կին կագեցող նման են. (16) Որ ունի զնա, ունի զհողմ, եւ եւղ աջոյ նորա աղաղակեսցէ։ [11]Եբր. թեքէ [12]Եբր. դարմանէ

[13]Եբր. Որպէս ջուր զերեսս երեսաց, նոյնպէս սիրտ զմարդ մարդոյ։ [14]Եբր. մարդկան ոչ յագեսցին [15]Եբր. Եթէ ծեծես զանզգամն յանկանի ընդ ցորենոյ սանդիտառամբ [16]Եբր. հանդամանաց [17]Եբր. և ոչ թագ ազգաց յազգս։ (25) Բուսանի բանջար, և երեւի բողբոջ, և ժողովի խոտ լերանց. (26) Ոչխարք ձորձորեբք քեզ, եւ գին անդոյ՝ նոխազք. (27) Եւ բաւականութիւն կաթին այծից ի կերակուր քո, ի կերակուր տան քո, և պաշար աղախնեաց քոց։ [18]Եբր. երկրի բազում լինին իշխանք նորա, եւ արամբ իմաստնով եւ գիտնով յերկարեսցի կարգ։ (3) Այր չքաւոր եւ որ զրկէ զաղքատս՝ է անձրեւ յորդառանց հացի։ (4) Որ թողուն զօրէնս՝ գովեն զամպարիշտն, եւ որ պահեն զօրէնս՝ զդէմ ունին նոցա։

առնուն ի մէտ զիրաւունս, իսկ որ
խնդրեն զՏէր՝ խելամուտ լինին ամե-
6 նայնի։ Լաւ է աղքատ՝ որ գնայ [1]ճշմար-
տութեամբ, քան զմեծատուն սուտ՚՚։
7 Պահէ զօրէնս որդի իմաստուն, իսկ որ
արածէ զորկորստութիւն՝ անարգէ զհայր
8 իւր։ Որ լնու զտուն իւր ի տոկոսեաց
եւ ի վաշխից՝ ժողովէ այնմիկ որ ողոր-
9 մի աղքատաց։ Որ խոտորեցուցանէ
զունկն իւր չլսել օրինաց, [2]եւ նորին
10 զիւր ուխտս պղծէ՚՚։ Որ մոլորեցուցա-
նէ զուղիղս չար ճանապարհաւ՝ ինքն
անկցի [3]յապականութիւն։ Անիծք բա-
ժանեսցին զչարութիւնս, եւ անօրէնք
տեսցեն առ բարութեամբք՝ եւ մի՛ մտցեն
11 ի նոսա՚՚։ Իմաստուն թուի անձին իւ-
րում այր մեծատուն, եւ աղքատն հան-
12 ճարեղ սպասանէ զնա։ [4]Վասն օգնա-
կանութեան՚՚ արդարոց բազում լինին
փառք, եւ [5]ի տեղիս ամպարշտաց՝ սա-
13 տակին մարդիկ՚՚։ Որ ծածկէ զամ-
պարշտութիւն իւր՝ ոչ յաջողեսցի, իսկ
որ ի վեր հանէ եւ [6]յանդիմանէ՝ սիրելի
14 լիցի՚՚։ Երանի իցէ առն որ [7]արհամար-
հիցէ զամենայն վասն երկիւղածու-
թեան՚՚, իսկ խիստն սրտիւ՝ անկցի ի
15 չարիս։ Առեւծ քաղցեալ եւ [8]գայլ ծա-
րաւի, որ աղքատ է՝ եւ՚՚ բռնան լինիցի
16 ազգի անանկի։ Թագաւոր կարօտ մտօք՝
մեծ զրպարտող, իսկ որ ատեայ զանի-
17 րաւութիւն՝ երկայնակեաց լիցի։ [9]Այր որ
զմահապարտ յերաշխի առնու, փախըս-
տական լինի եւ ոչ ի հաստատութեան։
Խրատեա զորդի քո, եւ հանգուսցէ զքեզ,
եւ տացէ զարդ անձին քում, եւ ոչ
18 հնազանդեսցի ազգի անօրինի՚՚ Որ գնայ
արդարութեամբ՝ գտցէ օգնականութիւն,
իսկ որ [10]նեղանէ ի թեւր ճանապարհս՝ նո-
19 վին՚՚ վարակեսցի։ Որ գործէ զերկիր
իւր՝ լցցի հացիւ, եւ որ զհետ երթայ
դատարկութեան՝ լցցի անանկութեամբ։
20 Այր հաւատարիմ օրհնեսցի յոյժ, եւ

[1] Եբր. յամբծութեան իւրում, քան զմեծատուն որոյ թեւր են ճանապարհք նորա [2] Եբր. աղօթք իւր նորա պղծութիւն են [3] Եբր. ի խոր- խորատ իւր. իսկ ամբիծք ժառանգեսցեն զբա- րութիւն [4] Եբր. Ցուրախութեան [5] Եբր. ի յառնել ամպարշտաց թաքիցէ, կամ, հետա- զօտեսցի մարդ [6] Եբր. թողու՝ գտցէ ողոր- մութիւն [7] Եբր. երկնչի հանապազ [8] Եբր. արջ անյագ, նոյնպէս է ամպարիշտն որ... [9] Եբր. Այր արեանհեղ մինչեւ ի գուբ փախիցէ, ոչ ոք պաշտպանեսցէ նմա։ [10] Եբր. խոտորի յեր- կուս ճանապարհս՝ ի միումն

[11]չարագործն ի պատուհասէ մի՛ ապրես-
ցի։ [12]Որ ոչ պատկառէ յերեսաց արդա-
21 րոց՝ չէ գովելի։ Որ ակն ածէ զերեսս
անօրինաց յանդիմանել՝ չէ բարւոք. այն-
պիսին պատառոյ հացի վաճառէ զմարդ՚՚
22 Փութայ մեծանալ այր չարակն, եւ ոչ
23 գիտէ թէ [13]ողորմածն յաղթէ նմա։ Որ
յանդիմանէ զայր ի ճանապարհս իւր՚՚
շնորհակալութիւն գտանէ քան զսու-
24 տակասապան լեզուաւ։ Որ [14]մերժէ զհայր
իւր կամ զմայր՝ եւ համարիցի չմեղան-
չել, կցորդ է նա արանց ամպարշտաց։
25 Այր ագահ դրդուէ զհակառակութիւն,
իսկ որ յուսացեալ է ի Տէր՝ [15]ընդ խնամով
26 կեցցէ։ Որ յուսացեալ է ի յանդգնու-
թիւն սրտի՚՚ նա անզգամ է, իսկ որ
27 գնայ իմաստութեամբ՝ ապրեսցի։ Որ
տայ աղքատաց՝ ոչ կարօտասցի, իսկ
որ դարձուցանէ զակն իւր ի նոցանէ՝ ի
28 բազում [16]կարօտութեան եղիցի։ Ի տե-
ղիս ամպարշտաց հեծեն արդարք՚՚, բայց
ի նոցա կորստեան բազմանան արդարք։

## ԳԼ. ԻԹ

1 [17]Լաւ է այր յանդիմանիչ՝ քան զայր
խստապարանոց. զի յանկարծակի հուր
հարեալ զնովաւ՝ չլինիցի բժշկութիւն։
2 Ի գովութեան՚՚ արդարոց՝ ուրախ եղի-
ցին ժողովուրդք. ընդ իշխանութիւնս
3 ամպարշտաց՝ [18]հեծեն արդարք՚՚։ Այր որ
սիրէ զիմաստութիւն՝ բերկրեսցի հայր
նորա, իսկ որ զբոզս արածէ՝ կորուսանէ
4 զմեծութիւն։ Թագաւոր արդար՝ կանգնէ
զաշխարհ, եւ այր [19]անօրէն կործանէ։
5 Որ կազմէ կռիւս յերեսս բարեկամի
իւրոյ՚՚, պատեսցէ հազիւ զոտիւք [20]իւ-
6 րովք։ Առն մեղաւորի որոգայթ սաս-
տիկ դիցի՚՚, իսկ արդարն՝ յուրախութեան
7 եւ ի խնդութեան եղիցի։ Գիտէ ար-
դար դատել զանանկս, իսկ ամպարիշտն

[11] Եբր. որ փութայն ի մեծութիւն՝ [12] Եբր. (21) Ակն ածել երեսաց չէ բարւոք. եւ վասն պատառոյ հացի անօրինի այր։ [13] Եբր. հասցէ նմա չքաւորութիւն։ (23) Որ յանդիմանէ զայր՝ ի վախճանի [14] Եբր. կողոպտէ [15] Եբր. գիրասցի։ (26) Որ յուսացեալ է ի սիրտ իւր՝ [16] Եբր. անէծս եղի- ցի։ (28) Յառնել ամպարշտաց՝ թաքչին մարդիկ [17] Եբր. Այր յանդիմանեալ որ խստացուցանէ զպա- րանոց իւր՝ յանկարծ խորտակեսցի, եւ չլինիցի բժշկութիւն։ (2) Ի բազմանալ [18] Եբր. հեծէ ժողովուրդն [19] Եբր. կաշառ առնուն կործանէ զնա։ (5) Այր որ փաղաքշէ զընկեր իւր [20] Եբր. նորա (6) Յամպարշտութեան առն մեղաւորի որոգայթ

[1]գիտութեան ոչ խելամուտ է. եւ աղքա-
տի՝ ոչ գտանին միտք իրաւախոհք։
8 Արք անօրէնք" հուր հարին զքաղաք,
եւ իմաստունք դարձուցին զբարկութիւն։
9 [2]Այր իմաստուն դատի զազգս, եւ այր
անզգամ ի բարկանալ իւրում ծաղր լինի՝
10 եւ ոչ ահնած է։" Արք արեանց՝ ատեան
զարդար, բայց ուղիղք փափաքեսցեն
11 յանձն նորա։ Զամենայն [3]բարկութիւն
իւր միանգամայն թափէ անզգամ, բայց
12 իմաստունն միչմամ համբերէ։ Թագա-
ւոր՝ որ ունկնդիր է բանից անիրաւու-
թեան, ամենեքեան որ ընդ նովաւ են՝
13 անօրէնք են։ [4]Փոխատու եւ փոխա-
ռու ի մի վայր հասեալք, երկոցունց
14 հանդէս առնէ Տէր։" Թագաւոր որ ճշմար-
տութեամբ դատիցի զաղքատս, աթոռ
նորա [5]ի վկայութիւն հաստատեսցի։
15 Գանք եւ կշտամբանք տան զիմաստու-
թիւն. մանուկ մոլորեալ՝ յամօթ առնէ
16 [6]զծնողս իւր։ Ի բազմանալ ամպարշ-
տաց՝ յաճախեն մեղք, բայց արդարք ի
նոցա [7]կործանելն՝ զահի հարկանին"։
17 Խրատեա զորդի քո եւ հանգուսցէ զքեզ,
18 եւ տացէ [8]զարդ անձին քում։ Ոչ գտցի
առաջնորդ ազգի անօրինի", բայց որ պահէ
19 զօրէնս՝ երանելի է։ Բանիւք ոչ խրատի
ծառայ խիստ, թէպէտ եւ իմանայցէ՝
20 չլսէ յունկան։ Յորժամ տեսանիցես
զայր յանդուգն բանիւք, գիտասջիր զի
21 յոյս զօյ յանզգամն քան ի նմա։ [9]Որ
փափկասուն լինի ի մանկութենէ, ի
ծառայութիւն մատնեսցի, եւ յետոյ մոր-
22 մոքեսցի յանձն իւր։" Այր բարկացող յա-
րուցանէ զհակառակութիւն, եւ այր [10]հեղ՝
զազարեսցոյց զմեղս, եւ այր սրտմտող
23 փորեաց զմեղս"։ Ամբարտաւանութիւն
զայր նկուն առնէ, բայց [11]զխոնարհս փա-
24 ռաւոր առնէ Տէր"։ Որ բաժանակից լինի
գողոյ՝ ատեայ զանձն իւր, [12]որք յոր-
ժամ երդումն առաջի դնիցի՝ լուեալ եւ
25 ոչ պատմիցեն, Եւ առ երկիւղի եւ ա-
մօթոյ մարդկան յայտնիցեն եւ կործա-
նեսցին. բայց որ յուսացեալ է ի Տէր՝
ուրախ լիցի։ Ամպարշտութիւն առն՝ ածէ
գայթակղութիւն, եւ որ յուսայ ի Տէր՝
26 ապրեսցի։" Բազումք ողոքեն զերեսս իշ-
խանաց, բայց ի Տեառնէ երանեն իրաւունք
27 առն։ Պիղծ է արդարոյ այր անօրէն,
եւ պիղծ է անօրինի ուղիղ ճանապարհ։

Գլ. Լ

1 [13]Զայս ասէ այր ցհաւատացեալս Աս-
2 տուծոյ. Եթէ լուռ եղէց." Զի անմտա-
գոյն եմ քան զամենայն մարդիկ, եւ
3 իմաստութիւն մարդոյ ոչ գոյ յիս։ [14]Ա-
ստուած ուսոյց ինձ իմաստութիւն, եւ"
գիտութեան սրբոյ խելամուտ եղէ, [15]եւ
4 ճանաչեմ զսրբութիւնս" Ո՞վ ել յերկինս
եւ էջ. ո՞վ ժողովեաց զհողմս ի ծոց
իւր. ո՞վ ամփոփեաց զջուրս ի ձորձս
իւր. ո՞վ կալաւ զծագս երկրի. զի՞նչ
անուն է նորա, կամ զի՞նչ անուն որդ-
5 ւոյ նորա, [16]զի գիտասցես թէ Ամենայն"
բանք Աստուծոյ ընտրեալք են, եւ վե-
6 րակացու է նա երկիւղածաց իւրոց։ Մի՛
յաւելուցուս ի բանս նորա, զի մի՛ յան-
դիմանեսցէ զքեզ, եւ սուտ լինիցիս։
7 Երկուս ինչս խնդրեմ ի քէն. մի՛ [17]հա-
նիր յինէն զշնորհս մինչչեւ մեռեալ
8 իցեմ. Զբան զուր եւ սուտ՝ հեռի արա
յինէն. մեծութիւն եւ տնանկութիւն
մի՛ տար ինձ, այլ կշռեա ինձ զպարտ անձին
9 բաւականութեամբ. Զի [18]մի՛ մեծացայց
եւ ստեցից, եւ ասիցեմ, թէ Ո՞վ տե-
սանիցէ զիս. կամ" աղքատացայց եւ
գողացայց, եւ երդուայց յանուն Աս-
10 տուծոյ իմոյ։ Մի՛ [19]մատներ զծառայ ի
ձեռս տեառն իւրոյ", զի մի՛ երբեք ա-
նիծանիցէ զքեզ՝ եւ [20]ապականիցիս։
11 Ծնունդ չար" զհայր իւր անիծանէ, եւ
12 զմայր իւր ոչ օրհնէ. [21]Ծնունդ չար" առ
արդարս ունի զանձն իւր, եւ [22]զելս

[1] Եբր. ոչ խելամուտ է։ (8) Արք ծաղրածուք [2] Եբր. Առն իմաստնոյ ի վարել իւրում դատ ընդ անմտի, թէ բարկասցի եւ թէ ծիծաղեսցի. չիք հանգիստ։ [3] Եբր. ոգի [4] Եբր. Աղքատն եւ այր բռնաւոր հանդիպեցան միմեանց, որ լուսաւորէն զաչս երկոցունց՝ Տէր է։ [5] Եբր. յաւիտեան [6] Եբր. զմայր [7] Եբր. կործանումն հայեսցին [8] Եբր. բերկրութիւն անձին քում։ (18) Առ ի չգոյէ տեսլեան մոլորի ժողովուրդ [9] Եբր. Որ սնուցանէ փափկութեամբ ի մանկութենէ զծառայ իւր, ի վախճանի եղիցի նմա որդի։ [10] Եբր. սրտմտող՝ բազմութիւն մեղաց [11] Եբր. խոնարհն հոգւով՝ առասցի փառս [12] Եբր. երդումն լուիցէ եւ ոչ պատմեսցէ։ (25) Երկեւղ մարդկան տացէ որոգայթ, բայց որ յուսացեալ է ի Տէր՝ բարձրասցի [13] Եբր. Բանք Ագուրայ որդւոյ Յակեայ, պատգամն. ասաց այրն ցԻթիէլ, ցԻթիէլ եւ ցՈւքաղ։ [14] Եբր. Եւ ոչ ուսայ զիմաստութիւն, և ոչ [15] Եբր. գիտեմ [16] Եբր. գիտիցես՞ որդեւք։ (5) Ամենայն [17] Եբր. արգելուր [18] Եբր. գուցէ յագեցայց եւ յուրաստ եղէց, եւ ասացից թէ Ո՞վ է Տէր. եւ գուցէ [19] Եբր. չարախօսեր զծառայէ առ տէր իւր [20] Եբր. յանցանիցես։ (11) Է ազգ որ [21] Եբր. Է ազգ որ [22] Եբր. յաղտեղութենէ իւրմէ

13 անձին իւրոյ՝ ոչ լուացաւ։ [1]Ծնունդ
 չար՝ ամբարտաւան աչս ունի, եւ յար-
14 տեւանունս իւր հպարտանայ։ [1]Ծնունդ
 չար՝ իբրեւ զսուսեր ունի զատամունս
 իւր, եւ զժանիս իւր իբրեւ զկարիճս,
 մաշել եւ ուտել զխոնարհս երկրի եւ
 զաղքատս ի մարդկանէ։
15 [2]Տզրկի երեք դստերք էին սիրով սի-
 րեցեալք, եւ երեքին սոքա ոչ յագեցուցին
 զնա, եւ չորրորդն ոչ լցաւ ասել շատ.
16 Դժոխք եւ կորուստ եւ սէր կանանց եւ
 տարտարոսն եւ երկիր՝ ոչ յագի ջրով,
 եւ ջուր եւ հուր՝ ոչ երբեք ասեն շատ։
17 Ակն որ արհամարհէ զհայր եւ ա-
 նարգէ [3]զծերութիւն մօր, խլեսցեն
 զնա ագռաւք ձորոց, եւ գէչ գէչ
 արասցեն զնա ձագք արծուեաց։
18 Երեք են՝ զորս անհնար է ինձ իմա-
 նալ, եւ [4]զչորրորդն ոչ ճանաչեմ.
19 Զհետս արծուոյ թռուցելոյ, եւ զճանա-
 պարհս օձի ի վերայ վիմի, եւ զշաւիղս
 նաւի ընդ ծով գնացելոյ, եւ զճանապարհս
20 առն [5]երիտասարդի. Նոյնպիսի է եւ ճա-
 նապարհ կնոջ շնացողի. [6]զի յորժամ գոր-
 ծէ ինչ՝ լուանայ եւ ասէ, Իմ չիք ինչ
 գործեալ։
21 Երիւք շարժի երկիր, եւ չորրորդին
22 ոչ կարէ հանդարտել. Եթէ ծառայ թա-
 գաւորեսցէ, եւ անմիտն եթէ յագեսցի
23 հացիւ, [7]Եւ աղախին եթէ հանիցէ զտի-
 կին իւր, եւ կին ատելի եթէ գտանիցի
 առն բարւոյ։
24 Չորք են որ փոքր են յերկրի, եւ նո-
 քա իմաստնագոյնք են քան զիմաս-
25 տունս. Մրջիւնն՝ որոյ ոչ գոյ զօրու-
 թիւն, եւ պատրաստէ ամարայնւոյ զկե-
26 րակուր իւր. Եւ ճագար՝ ազգ անհզօր,
 որ արարին ի վէմս զտաղաւարս իւրեանց.
27 Առանց թագաւորի է մարախ, եւ [8]զօ-
 րաժողով լինի իբրեւ ի միոջէ հրամանէ
28 օրինօք։ Եւ սարդ՝ կռուեալ ձեռօք յորմ,
 [9]որ դիւրին է առ որսալ, բնակէ ի
29 յարկս թագաւորաց։ Երեք են որ պարծ
 շրջին, եւ [10]չորրորդն գեղեցիկ ճեմի.
30 Կորիւն առիւծու հզօր է քան զանաս-
 ունս, [9]որ ոչ դառնայ՝ եւ ոչ թիկունս
31 դարձուցանէ [11]յանասնոց. Եւ աքաղաղ՝
 որ շրջի ի մէջ մարեաց սիգալով. եւ
 նոխազ՝ առաջնորդ հօտի. եւ թագաւոր՝
 որ հրապարակախօս լինի ի մէջ ազգաց։
32 Եթէ զանձն դիւրութեան տացես, եւ
 ձեռն ի բերան կռուով ձգեսցես, անար-
33 գեսցիս։ Կթեա կաթն՝ եւ եղիցի եղ.
 ապա եթէ կարի ճմլեսցես զպտկունսն,
 ելանէ արիւն. եւ եթէ ձգեսցես զբանս,
 ելցեն դատաստանք եւ կռիւք։

## ԳԼ. ԼԱ

1 [12]Իմ բանք յԱստուծոյ խօսեցեալ են,
 հրաման թագաւորի զոր խրատեաց զնա
2 մայր իւր։ Զի, որդեակ, Աստուծոյ բանք
 են. անդրանիկդ, քեզ ասեմ, որդի. զի,
 որդեակ, պտուղ որովայնի իմոյ. զի՞,
3 որդեակ ուխտից իմոց, Մի՛ տար կա-
 նանց [13]զմեծութիւն քո, եւ զմիտս քո
 եւ զկեանս ի խորհուրդս յետինս. խոր-
 հրդով գործեա զամենայն, խորհրդով
4 արբ զգինի։ Մեծամեծքն բարկացողք
5 են, գինի մի՛ արբցեն. Զի մի՛ իբրեւ
 արբցեն՝ մոռանայցեն զիմաստութիւն,
 եւ ուղիղ ոչ կարասցեն դատել զտկարսն։
6 Տուք արբեցութիւն տրտմելոց, եւ
7 գինի ըմպել ցաւագնոտաց. Զի արբցեն՝
 եւ մոռասցին զաղքատութիւնս իւրեանց,
8 եւ զցաւս իւրեանց ոչ եւս յիշեսցեն։ Բաց
 զբերան քո [14]բանիւ Աստուծոյ, եւ դա-
9 տեա զամենեսեան ողջմտութեամբ, Եւ
 ընտրեա եւ որոշեա զտնանկն եւ զտկարն։

---

[1] Եբր. Է ազգ որ  [2] Եբր. Տզրկի երկու դստերք են, տուր՝ Տուր, տուր։ Երեքին սոքա ոչ յագեսցին, չորք չասեն շատ. (16) Դժոխք եւ ամուլ արգանդ, երկիր որ ոչ յագի ջրով. եւ հուր որ ոչ ասէ շատ։  [3] Եբր. հնազանդել  [4] Եբր. չորք զորս  [5] Եբր. առ աղջկան  [6] Եբր. ուտէ եւ սրբէ զբերան իւր, եւ ասէ, Ձիք իմ գործեալ չարութիւն  [7] Եբր. Կին ատելի եթէ լինիցի առն, եւ աղախին եթէ եղիցի ժառանգ տիկնոջ իւրում։  [8] Եբր. ելանեն ամենեքին գունդ գունդ  [9] Յ Եբր. [illegible]

[10] Եբր. չորք են որ գեղեցիկ ճեմեն  [11] Եբր. յերեսաց ամենեցուն. (31) Պնդեալն զմէջս ( [illegible] ) եւ նոխազ եւ թագաւոր ընդ որում է ժողովուրդ նորա։
(32) Եթէ անմտութեամբ գնացեր ի բարձրացուցանել զանձն. և եթէ չարիս խորհեցար, լեր ափ ի բերան. (33) Զի ի ճնշել կաթին՝ ելանէ կոգի, եւ ի ճնշել անգաց՝ ելանէ արիւն, եւ ի ճնշել ցասման՝ ելանէ կռիւ։  [12] Եբր. Բանք Լեմուէլի թագաւորին. պատգամն զոր ուսոյց նմա մայր նորա։ (2) Զի՞նչ, որդեակ իմ, զի՞նչ. որդեակ որովայնի իմոյ, եւ զի՞նչ,  [13] Եբր. զզօրութիւն քո, և զճանապարհս քո որոց ջնջեն զթագաւորս։ (4) Չէ թագաւորաց, Լեմուէլ, չէ թագաւորաց ըմպել զգինի, եւ ոչ իշխանաց՝ օղի. (5) Զի մի՛ արբցեն եւ մոռանայցեն զօրէնս, և թիւրեսցեն զիրաւունս ամենայն որդւոց տառապելոց։ [14] Եբր. վասն համրի, և յիրաւունս ամենայն որդւոց լքելոց։ (9) Բաց զբերան քո, դատեա արդարութեամբ, եւ դատ արա աղքատին եւ տնանկի։

10 [1]Կին ժրագլուխ եթէ գտանիցէ," պատ-
ուականագոյն է այնպիսին քան զականս
11 պատուականս։ Վստահ է ի նա սիրտ
առն իւրոյ. այնպիսին աւարաց երբեք
12 ոչ կարօտասցի։ [2]Գործակից է առն իւ-
րում ամենայն բարեաց կենաց՝ և ոչ
13 չարեաց։" Գտեալ ասր և կտաւ՝ արար
14 [3]անօթս պիտանիս ձեռօք իւրովք"։ Եւ
եղև իբրև զնաւ շահաբեր. ի հեռաստանէ
15 ժողովէ իւր [4]զանձս։ Յառնէ ընդ ար-
շալուրջս, և տայ կերակուր ընտանեաց,
16 և գործ նաժշտաց։ Տեսանէ զանդ գե-
ղեցիկ՝ և գնէ զնա, և ի պտղոյ ձե-
17 ռաց իւրոց [5]գործէ զերկիր"։ Գօտի ած-
եալ հաստատութեամբ ընդ մէջ իւր՝
18 մխեաց զբազուկս իւր ի գործ. Եւ ճա-
շակեաց՝ զի քաղցր է գործել, և ոչ
շիջանի ճրագ ի նմանէ զամենայն գիշեր։
19 Զձեռս իւր ձգէ [6]յօգուտ, և զմատունս
20 իւր անձանձրոյթ տայ իլոյ"։ Զձեռս իւր
ընդարձակեաց աղքատաց, և կարկառ
21 պտուղ տնանկին։ Ոչ [7]ինչ հոգայ ի
տանէ կողմանէ այր նորա՝ յորժամ ուրեք
յամիցէ", զի ամենեքին որ զնովաւ են՝
22 զգեցեալ են կրկին պատմուճանս։ [8]Արար
առն իւրում բեհեզս և ծիրանիս, և
23 անձին իւրում արկանելիս։" Երևելի է
ի դրունս այր նորա, յորժամ նստիցի ի
ժողովրդեան ի մէջ ծերոց [9]և բնակ-
24 չաց" երկրի։ Կտաւս արար և վաճառ-
եաց, և արկանելիս՝ [10]Քանանացւոց։
25 Զզօրութիւն և զմեծվայելչութիւն զգե-
ցաւ, և ուրախ եղև յաւուրս յետինս։
26 Զբերան իւր եբաց [11]չափով և իմաս-
տութեամբ, և կարգ եդ լեզուի իւրում։
27 Պարկեշտ են ճանապարհք տան նորա",
28 և հաց դատարկութեան ոչ եկեր։ [12]Եւ
ողորմածութիւնք նորա կանգնեցին զոր-
դիս նորա և մեծացուցին". և այր
29 նորա գովէ զնա՝ և ասէ, Բազում
դստերք [9]ստացան զմեծութիւն, բա-
զումք" արարին զօրութիւն, բայց դու
[9]առաւել եղեր և" անցուցեր զամենե-
30 քումբք։ [13]Սուտ հաճութիւնք և ընդու-
նայն գեղ կնոջ ոչ գոյ ի քեզ. զի կին
իմաստուն և բարեպաշտօն օրհնեսցի.
զերկիւղածս Տեառն պատուեսցէ նա։
31 Տուք նմա ի պտղոյ շրթանց նորա, և
գովեսցի ի դրունս այր նորա։ Ձի ճա-
նապարհք առն առաջի երեսաց իւրոց
երթիցեն, և աջողեսցին յաւիտեանս
յաւիտենից։"

[1] Եբր. Զկին առաքինի ո՞ գտցէ. [2] Եբր. Ածէ նմա բարիս և ոչ չարիս զամենայն աւուրս կենաց իւրոց։ [3] Եբր. մտադրութեամբ ձեռաց իւրոց [4] Եբր. հաց [5] Եբր. տնկէ զայգի [6] Եբր. յիլ, և ափ նորա ունի զաղեկատ [7] Եբր. երկնչի վասն տան իւրոյ ի ձեանէ [8] Եբր. Արար իւր արկանելիս, հանդերձ նորա բեհեզ և ծիրանի։

[9] Յեբր. դ-յ-ա-ե [10] Այսինքն՝ վաճառականաց [11] Եբր. իմաստութեամբ, և օրէնք ողորմութեան ի լեզուի նորա։ (27) Դիտէ զճանապարհս տան իւրոյ [12] Եբր. Յառնեն որդիք նորա և երանի տան նմա [13] Եբր. Սուտ է վայելչութիւն, և ընդունայն գեղ. կին երկիւղած ի Տեառնէ գովեսցի։ (31) Տուք նմա ի պտղոյ ձեռաց նորա, և գովեսցեն զնա ի դրունս գործք նորա։

# ԳԼՈՒԽՔ ԺՈՂՈՎՈՂԻՆ

| | Գլ. | Համր. |
|---|---|---|
| Ասէ թէ յայտնի եղելումն ոչ ոք կարէ ընդդէմ ասել կամ ուրանալ, այլ զյետ մահու կեանս ոմանք ընդ կործեալս դնեն, եւ խաբեն թէ իբրեւ զստուեր անցանեն իբրեւ մարդկան յետ մահուանս. այլ ես ասեմ, թէ Բարի է յետ մահու անուն բարի գրեալ ի կեանս քան զեւղ հեշտաբար մարմնոյ ։ | Զ. | 10 |
| Հաստատելով զայս՝ բարի ասէ զխոկումն մահու՝ որ է վախճան մարդկան. զի խոկմամբ մահու կենդանին զգուշանայ ի զրպարտելոյ զոք, եւ խնայէ զինքն ի բարկութենէ ։ | Է. | 3 |
| Ծոյլքն զքաջութիւն առաջնոցն՝ ժամանակին չքեն, եւ ոչ իմաստութեամբ ստանան զառաքինութիւն, որ այնչափ պայծառ է քան զինչս, որչափ արծաթ քան զստուերն իւր, եւ կենդանի առնէ զունողն իւր. զորոյ ներհակն զանզգամութիւն՝ եղծանէ Աստուած. արդ՝ այժմ փութա ի բարիս, և փախիր ի չարէ, զի մի՛ յետոյ պապանձեսցիս ։ | Է. | 11 |
| Թէ անձնիշխան բարուք ոմն անշարժ մնայ յարդարութիւն՝ թէ եւ մեռանել հասցէ, եւ ոմն յամպարշտութիւն նոյնպէս. արդ մի՛ խոտորիր յաջ եւ մի՛ յահեակ, այլ յերկեւղ եւ յիմաստութիւն յեցեալ՝ ուղղեա զգործս քո ի բարին. եւ մի՛ ի դժնեայ բանից գրգռեսցիս անիծանել ումեք ։ | Է. | 16 |
| Փորձեցի զի մեծ է ի քաջութիւնս ոչ ըմբռնել յորոգայթ կանանց, զի ոչ բնաւ գտանի ի կանայս ողջախոհութիւն ։ | Է. | 24 |
| Զի յԱստուծոյ միամիտ եղեալ մարդիկ, պատճառանօք իմաստից յանօգուտ խնդիրս տային. այլ վրիպին ի խնդրոյն. զի իմաստունն ի համեստ դիմացն երեւի, որպէս յանդգունն ի լրբութենէն ։ | Է. | 30 |
| Ասէ՝ թագաւորի եւ Աստուծոյ հաւատարիմ լինել, զի մի՛ յիշխանութենէն պատժեսցի ի ժամ իրաւանց. եւ անմիտ է ոչ ճանաչել զբազում Աստուծոյ խնամսն. զի այնպիսին յետ անվրէպ մահու ընդ ամպարշտս կորիցէ ։ | Ը. | 2 |
| Թէ բանաւոր իշխանք չարչարեն զմարդիկ, այլ ընդ կանխաւ ամպարշտելոյն արմատաքի խլեն, զորս եւ ազան սուրբք. եւ զի ոչ վաղվաղակի պատժէ Աստուած՝ վասն այնորիկ գործեն զչար. այլ երկնչել պարտ է յԱստուծոյ, զի յետ ոչ բազում աւուրց ըմբռնի աներկիւղն ի սատակումն ։ | Ը. | 9 |
| Զի մեծ չար է՝ զարդարն ամպարիշտ կարծել, եւ զանիրաւն՝ արդար, և զուտելն՝ բարի. այլ այնու անօգուտ ջանիւ ոչ գտանի բարին. և կարծելն մի եւ նոյն վճարումն գոլ արդարոյ և մեղաւորի՝ չարութիւն է մեծ ։ | Ը. | 14 |
| Չարէ կարծելն թէ որ մեռանին՝ կորնչին ի սպառ. եւ վասն այսոր լաւ գոլ զկենդանիս թէ եւ իբրեւ զշուն շրջիցի, զի յետ մահու չիք ինչ յոյս բարւոյ. ապա կեր եւ արբ, ո՛վ դու, ընդ կանայս, և բռնաջիր. զի ի գերեզմանի խափանին այնոքիկ ։ | Թ. | 3 |
| Ընդդէմ բերէ այնպիսեացն՝ թէ ոչ մարմնով թեթեւքն զհոգեւոր ընթացսն, եւ ոչ մարմնով զօրեղքն զհոգեւոր կռիւն մղեն. եւ ոչ ընչիւք ստանան հանճար. զի տգիտաց է այս կարծիք, որք իբրեւ ձկունք անկցին յորոգայթ. իսկ իմաստունն՝ և զքաղաք պաշարեալ ապրեցուցէ, որոյ բանն թէպէտ եւ առժամայն անարգ՝ այլ յետոյ նախապատիւ քան զաղաղակ մեծաց ։ | Թ. | 11 |
| Ընդդիմաքննութիւն իմաստութեան և անզգամութեան, եւ թէ չար իշխանն արկցէ զոք ի մեղս, ողոքեսցէ զԱստուած, եւ նա թողցէ զմեղսն ։ | Թ. | 18 |
| Թէ եւ ոչ կամի՝ Սատանայ բարձրացուցանէ զանմիտն ի կորուստ նմին, և զծառայս մեղաց ի ձիս ։ | Ժ. | 5 |
| Որ նենգէ ուրուք՝ Սատանայ, թէ մարդկան՝ ինքեան դաւաճանէ. եւ թէ անկցի կացինն ի մեղսն՝ անօթ ոք չարին, թէ զգլխոյ՝ տրտմի նա, եւս եւ որ յարդէ զվազանցուկ զօրութիւն ։ | Ժ. | 8 |
| Զչար խորհրդով մեղկեալսն որք թօթեն զՍատանայ՝ հարկանէ մեղօք. իսկ իմաստունք շնորհս բղխեն, եւ անմիտք զնորին ներհակն ։ | Ժ. | 11 |
| Զի անյոյս են եղեալքն եւ լինելոցք, եւ ի չարիս մաշին անկարգ քաղաքավարեալքն. ուր ժուժկալքն՝ երեւելին պայծառք ։ | Ժ. | 14 |
| Թէ արտաքոյ յարկաց առաքինութեան ձմեռնային վատք եւ հացկատակք եւ գինեսէրք, արծաթասէրք եւ հայհոյիչք ։ | Ժ. | 18 |
| Խրատէ ողորմութեամբ սպաս առնել յանկարծահաս աւուրն անվրէպ հողմոյ մահուն որ ընկենու զծառս զմեզ, քան զոր կանուխ պիտի ջանալ, զի անյայտ է երբն, որպէս մանուկ յարգանդի՝ թէ էգ է, թէ արու ։ | ԺԱ. | 1 |
| Ընդդէմ այսոցիկ յուսահատքն ի յարութենէ՝ ի վայելս կենցաղոյս յորդորեն, անտի կարծելով զբան յարութեանն. ուրախանալ մանկանց ախորժակօք մարմնոյ յորդորեն ։ | ԺԱ. | 7 |
| Սաստ այնպիսեացն ահիւ դատաստանին՝ զգաստանալ նախ քան զոր մահու եւ հասարակաց ձմերանին, | | |

Գլ. Հմր. | Գլ. Հմր.

եւ խռովելոյ աշխարհապահ հրեշտակաց ի խափանել զօրաւորաց, և որք յերկանան աղան տնանկաց, ի փակել զգայարանաց եւ մեկնել հոգւոյ ի կոչ վերնոյն. անսուրբ կանայք ատեացեն զերգս, եւ շաղախեալքն արեամբ որպէս նշի տագնապին ահիւ տանջանացն իւրիւ զթանձր մարմն ի վերայ թռելոց. ծանուցքն մեղօք ընդ երկիր տարածին, արդարք ի հանգիստ գնան, եւ վարքն ի կոծ լալոյ. զի արծաթ եւ ոսկի ոչ փրկէ յանկանել մարմնոյս եւ խափանել կենաց եւ ժամանակի. եւ որք զԱստուած ճանաչեն հոգիք՝ առ Նա
վերանան ։ ԺԱ. 9
Որկնէ զաւագին խրատն, զի մի՛ անօգուտ լիցէ լսողաց. զի մեծաւ աշխատութեամբ գտեալ զկամս Աստուծոյ գրեաց, որ ընդոստուցանէ զոգիսն զերդ խթան՝ տուեալ ի ժողովողէն. եւ չէն պէտք անօգուտ ուսմանց, այլ երկնչել յԱստուծոյ. զի դատաստանաւ է հատու-
ցումն բարւոյ եւ չարի ։ ԺԲ. 8



# *ԺՈՂՈՎՈՂ

## ԳԼՈՒԽ Ա

1 ԲԱՆՔ Ժողովողին որդւոյ Դաւթի
թագաւորի [1]Իսրայէլի յԵրուսաղէմ։
2 Ունայնութիւն ունայնութեանց, ա-
սաց Ժողովողն, ունայնութիւն ունայ-
նութեանց, ամենայն ինչ ընդունայն է։
3 Զի՞նչ աւելի է մարդոյ յամենայն վաս-
տակս իւր զոր տաժանի ընդ արեգա-
4 կամբ։ Ազգ երթայ եւ ազգ գայ. եւ եր-
5 կիր յաւիտեան կայ։ Ծագէ արեգակն,
եւ մտանէ արեգակն եւ ի տեղի իւր
6 ձգի ի ծագել իւրում։ Երթայ ընդ հա-
րաւ, եւ պատի ընդ հիւսիսի, պատե-
լով պատի. գնայ հողմ, եւ ի շրջանս իւր
7 դառնայ հողմ։ Ամենայն ուղխք ի ծով
գնան, եւ ծով ոչ լնու. ի տեղի յոր
ուղխք գնան՝ անդ նոքին դառնան իջանել։
8 Ամենայն բանք ջանիւ, եւ ոչ կարասցէ այր
խօսել. ոչ յագեսցի ակն տեսանելով, եւ
9 ոչ լցցի ունկն լսելով։ Զինչ է որ եղեւն՝
նոյն ինքն որ լինելոցն է. եւ զինչ է որ
10 արարաւն, նոյն ինքն որ առնելոցն [2]է։ Եւ
ոչ է ամենայն առժամայն ընդ արեգա-
կամբ. զի զոր խօսիցի ոք եւ ասիցէ" Ահա-
ւասիկ այս նոր է, վաղ իսկ եղեալ է ի
11 յաւիտենից եղելոցն նախ քան զմեզ։ Ոչ
գոյ յիշատակ առաջնոցն, նա եւ ոչ վերջ-
նոցն որ լինելոց են. ոչ գոյ յիշատակ
նոցա ընդ լինելոցն ի վախճանի։
12 Ես *Ժողովող եղէ թագաւոր ի վերայ
13 Իսրայէլի յԵրուսաղէմ, Եւ ետու զսիրտ
իմ խնդրել եւ խորհել իմաստութեամբ
վասն ամենայնի որ եղեալ են ընդ ա-
րեգակամբ. [3]զի զբաղումն չար ետ Ա-
ստուած որդւոց մարդկան զբաղել [4]ընդ
14 արեգակամբ"։ Տեսի ես զամենայն արա-
րեալս որ արարեալ են ի ներքոյ արե-
գական, եւ ահա ամենայն ինչ ընդու-
նայնութիւն է եւ [5]յօժարութիւն ոգւոյ։
15 Թիւրեալն՝ ոչ կարասցէ [6]զարդարել, եւ
պակասեալն՝ ոչ կարասցէ ի թիւ անկա-
16 նել։ Խօսեցայ ի սրտի իմում՝ թէ Ա-
հաւասիկ ես մեծացայ եւ յաւելայ յիմաս-
տութեան քան զամենեսեան որ էին յա-
ռաջ քան զիս յԵրուսաղէմ. եւ սիրտ
իմ ետես բազում իմաստութիւն եւ գի-
17 տութիւն։ Եւ ետու զսիրտ իմ գիտել
զիմաստութիւն եւ զգիտութիւն, [7]զա-
ռակս եւ զիմաստութիւն". գիտացի ես՝ զի
սակայն եւ այս [5]յօժարութիւն ոգւոյ է։
18 Զի [8]բազմութիւն իմաստութեան՝ բազ-
մութիւն գիտութեան", եւ որ յաւելեալ
ի գիտութիւն՝ յաւելցէ ի ցաւս։

## ԳԼ. Բ

1 Ասացի ես ի սրտի իմում, Եկ եւ փոր-
ձեցից զքեզ յուրախութեան, եւ [9]տեսից ի
բարութեան. եւ ահա եւ այս ինքն ունայ-
2 նութիւն է։ Ծաղուն ասացի [10]Զխօսանս,
եւ ուրախութեանն՝ Զի՞ գործես զայդ։
3 Եւ խորհեցայ [11]թէ սիրտ իմ ձգեսցէ
իբրեւ զգինի" զմարմին իմ. եւ սիրտ
իմ առաջնորդեաց իմաստութեամբ,
[12]եւ զօրանալ յուրախութեան", մին-
չեւ տեսից ո՛ր իցէ բարին որդւոց
մարդկան զոր արասցեն ի ներքոյ արե-
գական ի թիւ աւուրց կենաց իւրեանց։
4 Յաճախեցի ինձ արարս, շինեցի ինձ ա-
5 պարանս, տնկեցի ինձ այգիս։ Արարի
ինձ պարտէզս եւ դրախտս, եւ տնկեցի
6 ի նոսա փայտս ամենաբերս։ Արարի ինձ
աւազանս ջրոյ՝ արբուցանել ի նոցանէ
7 զանտառախիտս մայրեաց։ Ստացայ ծա-
ռայս եւ աղախինս, եւ ընդոծինք եղեն

---

* Անուն է Հայերէն յետագրոյ՝ Եկղեսիաստէս
[1] Յեբր. պակասէ [2] Եբր. է. եւ չիք ինչ նոր ընդ արեգակամբ։ (10) Գուցէ՞ բան որ ասիցէ. [3] Եբր. զայս [4] Եբր. նովաւ

[5] Կամ, աշխատութիւն [6] Եբր. ուղղել [7] Եբր. զանմտութիւն եւ զյիմարութիւն [8] Եբր. ի բազմութեան իմաստութեան՝ բազում տրտմութիւն [9] Եբր. տես, կամ, վայելեսջիր [10] Եբր. Յիմար [11] Եբր. ի սրտի իմում զուարթացուցանել գինւով [12] Եբր. խելամուտ լինել անմտութեան

ինձ. եւ ստացուածք անդէոց եւ
հօտից բազում եղեն ինձ քան զամենե-
ցուն՝ որ յառաջ եղեալ էին քան զիս
8 յԵրուսաղէմ։ Ժողովեցի ինձ արծաթ եւ
ոսկի, եւ ստացուածս բազումս զթա-
գաւորաց եւ զգաւառաց. արարի ինձ
զուսանս եւ երգեցիկս՝ արս եւ կանայս,
եւ զփափկութիւնս որդւոց մարդկան.
[1]արարի ինձ սակառատեառ՝ արս եւ
9 կանայս՚՚։ Եւ մեծացայ առաւել քան զա-
մենեսին որ յառաջ էին քան զիս յԵ-
րուսաղէմ. նա եւ իմաստութիւն յա-
10 ւելաւ ինձ։ Եւ զամենայն զոր ինչ
խնդրեցին աչք իմ, ոչ զրկեցի ի նոցա-
նէ. եւ ոչ արգելի զսիրտ իմ յամենայն
ուրախութենէ. զի սիրտ իմ ուրախ ե-
ղեւ յամենայն վաստակս իմ, եւ այս ե-
ղեւ բաժին իմ յամենայն վաստակոց ի-
11 մոց։ Եւ հայեցայ ես յամենայն արարս
իմ զոր արարին ձեռք իմ, եւ ի վաս-
տակս զոր վաստակեցայ առնել, եւ ա-
հա ամենայն ընդունայնութիւն է եւ
[2]յօժարութիւն ոգւոյ. եւ ոչ ինչ է ա-
ռաւելութիւն ի ներքոյ արեգական։
12 Եւ հայեցայ ես տեսանել զիմաստու-
թիւն եւ [3]զյօսանս եւ զանզգամութիւն.
քանզի [4]ո՞վ է մարդ որ երթիցէ զհետ
13 խորհրդոյն զոր ինչ արար՚՚։ Եւ տեսի ես՝
եթէ է առաւելութիւն իմաստութեան
քան անմտութեան, որպէս է առաւե-
14 լութիւն լուսոյ քան զխաւարի։ Իմաստ-
նոյն աչք իւր ի գլուխ իւրում, եւ որ
անմիտն է՝ ընդ խաւար գնայ. եւ գի-
տացի ես թէ պատահար մի պատահե-
լոց է ամենեցուն նոցա։
15 Եւ ասացի ես ի սրտի իմում, թէ Որ-
պէս պատահումն անզգամին՝ եւ ինձ իսկ
պատահեսցէ նոյն, եւ ընդէ՞ր [5]իմաստ-
նացայ. եւ զաւելորդս՚՚ խօսեցայ ի սրտի
իմում. զի եւ այս իսկ ունայնութիւն
է. [6]զի անզգամն յաւելորդացն խօսի՚՚.
16 Վասն զի ոչ գոյ յիշատակ իմաստնոյն
ընդ անզգամին յաւիտեան. զի արդա-
րեւ իսկ յաւուրսն որ գալոց են ամե-
նայն ինչ մոռացօնք են. եւ զիա՞րդ մե-
17 ռանիցի իմաստունն ընդ անմտին։ Եւ
ատեցի ես զկեանս իմ. զի չար էր ինձ
արարածն, որ արարեալ էր ի ներքոյ
արեգական. զի ամենայն ինչ ունայնու-
18 թիւն է եւ [2]յօժարութիւն ոգւոյ։ Եւ
ատեցի ես զամենայն վաստակս իմ զոր
ջանացայ ընդ արեգակամբ, զի թողում
ես զնա մարդոյ՝ որ լինելոց է յետ իմ։
19 Եւ ո՞վ գիտէ իմաստուն լինիցի թէ ան-
միտ, եւ կամ իշխելո՞ց իցէ ամենայն
վաստակոցն իմոց զոր ես վաստակե-
ցի, եւ յորս իմաստնացայ ընդ արեգա-
կամբ. սակայն եւ այս ունայնութիւն է։
20 Եւ դարձայ ես հրաժարել սրտիւ ի-
մով յամենայն վաստակոցն իմոց զոր
21 վաստակեցի ընդ արեգակամբ։ Զի է
մարդ՝ զի վաստակ նորա իմաստութեամբ
եւ գիտութեամբ եւ արութեամբ. եւ
մարդ՝ որ ոչ ինչ վաստակեաց ի նմա՝
տացէ նմա մասն նորա. սակայն եւ այս
ընդունայնութիւն է եւ չարութիւն մեծ։
22 Զի՞ լինի մարդոյն յամենայն վաստակս
իւր, եւ [7]ի յօժարութեան սրտի իւրոյ՝
յորում ինքն ջանայ ի ներքոյ արեգա-
23 կան։ Զի ամենայն աւուրք նորա՝ ցա-
ւոց, եւ սրտմտութեան՝ զբօսանք իւր,
եւ գիշերի ոչ ննջէ սիրտ նորա. սակայն
24 եւ այս ընդունայնութիւն է։ Եւ ոչ
գոյ բարի ինչ մարդոյ, բայց զոր
ուտէն եւ ըմպէն. եւ եցոյց անձին
իւրում բարիս ի վաստակս իւր. սակայն
եւ զայն տեսի զի ի ձեռանէ Աստուծոյ
25 է։ Քանզի ո՞վ իցէ որ ուտիցէ եւ ըմ-
26 պիցէ [8]առանց նորա՚՚։ Զի մարդոյ բար-
ւոյ՝ առաջի երեսաց իւրոց ետ զիմաս-
տութիւն եւ զգիտութիւն եւ զուրա-
խութիւն, եւ մեղանչականին ետ զբա-
զումն յաճախել եւ ժողովել եւ տալ
բարւոյն առաջի երեսաց Աստուծոյ. սա-
կայն եւ այն ունայնութիւն է եւ [2]յօ-
ժարութիւն ոգւոյ։

## ԳԼ. Գ

1 Ամենեցուն ժամանակ է, եւ ժամ ա-
2 մենայն իրաց ի ներքոյ երկնից. Ժա-
մանակ ծնանելոյ, եւ ժամանակ մեռա-
նելոյ. ժամանակ անկելոյ, եւ ժամա-
3 նակ խլելոյ զանկեալն. Ժամանակ սպա-
նանելոյ, եւ ժամանակ բժշկելոյ. Ժա-
մանակ քակելոյ, եւ ժամանակ շինե-
4 լոյ. Ժամանակ լալոյ, եւ ժամանակ
ծիծաղելոյ. ժամանակ կոծելոյ, եւ ժա-
5 մանակ կաքաւելոյ. Ժամանակ ձգելոյ
քարինս, եւ ժամանակ ժողովելոյ քա-

[1] Եբր. տիկինս եւ հարճս [2] Կամ, աշխատութիւն [3] Եբր. զյիմարութիւն [4] Եբր. զի՞նչ առնիցէ մարդ որ գայ զհետ թագաւորին, բայց զոր ինչ արարեալն իցէ արդէն [5] Եբր. իմաստնացայ առաւել. եւ [6] Եբր. պակասէ

[7] Եբր. ի տանջանս [8] Կամ, քան զիս

րինս․ ժամանակ գիրկս արկանելոյ, եւ
ժամանակ հեռանալոյ ի գիրկս արկա-
6 նելոյ․ ժամանակ խնդրելոյ, եւ ժամա-
նակ կորուսանելոյ․ ժամանակ պա-
հելոյ, եւ ժամանակ արտաքս հանելոյ․
7 ժամանակ պատառելոյ, եւ ժամանակ
կարկատելոյ․ ժամանակ լռելոյ, եւ ժա-
8 մանակ խօսելոյ․ ժամանակ սիրելոյ, եւ
ժամանակ ատելոյ․ ժամանակ պատե-
րազմի, եւ ժամանակ խաղաղութեան։
9 Արդ զի՞նչ աւելութիւն է այնմ
10 որ առնէ որով ինքն ջանայ։ Տեսի
ես զամենայն զբաղումն զոր ետ Ա-
ստուած որդւոց մարդկան՝ զբաղնուլ
11 ի նմա։ Ամենայն ինչ զոր գործեաց՝ բա-
րի է ի ժամանակի իւրում․ նա՝ եւ զա-
մենայն յաւիտեանս ետ ի սիրտս նոցա․
[1]զի մի՛" գտցէ մարդ զարարածն զոր ա-
րար Աստուած ի սկզբանէ մինչ ցկա-
12 տարած։ Գիտացի թէ ոչ գոյ բարի ի
նոսա՝ եթէ ոչ ուրախ լինել, եւ գոր-
13 ծել բարիս ի կեանս իւրում։ [2]Քանզի ա-
մենայն մարդ՝ որ ուտիցէ եւ ըմպիցէ
եւ տեսանիցէ բարի յամենայն վաստակս
14 իւր, այն պարգեւ Աստուծոյ է։ Գի-
տացի թէ զամենայն զոր արար Ա-
ստուած՝ այն կայ յաւիտեան․ ի նոսա ոչ
ինչ յաւելուլ, եւ ի նոցանէ ոչ ինչ գոյ պա-
կասեցուցանել․ եւ արար Աստուած, զի
15 երկիցեն յերեսաց նորա։ Որ ինչ եղեն՝
այն ահա կայ, եւ որ ինչ լինելոցն էր՝
ահա եղեւ․ եւ Աստուած խնդրեսցէ
[3]զհալածեալն։
16 Դարձեալ տեսի ի ներքոյ արեգական
տեղի դատաստանի՝ եւ անդ [4]ամպա-
րիշտ․ եւ տեղի արդարոյ՝ եւ անդ բա-
17 րեպաշտ"։ Եւ ասացի ես ի սրտի իմում,
թէ Զարդարն եւ զամպարիշտն դատի
Աստուած․ զի [5]ժամանակ է ամենայն
իրաց, եւ ի վերայ ամենայն արարածոց
18 ժամ եւ ժամանակ" անդ։ Ասացի ես ի
սրտի իմում [6]վասն խօսից" որդւոց մարդ-
կան՝ եթէ [7]Դատի զնոսա Աստուած, եւ
զի ցուցցէ եթէ նոքա անասունք են։
19 Սակայն [8]եւ ի մէջ նոցա" պատահար է
որդւոց մարդկան, եւ պատահար է ա-
նասնոց, եւ պատահար յամենեսին ի
նոսա․ որպէս մահ սորա՝ նոյնպէս եւ
մահ նորա եւ շունչ է յամենեսին․ եւ
զի՞նչ աւելութիւն եղեւ մարդոյ քան
զանասնոյ․ եւ ոչ ինչ․ զի ամենայն ինչ
20 ընդունայն է։ Ամենայն ի մի տեղի եր-
թայ․ ամենայն եղեւ ի հողոյ, եւ ամե-
21 նայն դառնայ ի հող։ Եւ ո՞վ գիտէ զո-
գիս որդւոց մարդկան եթէ ելանեն ի
վեր, եւ զշունչ անասնոյ՝ եթէ իջանէ
22 ի խոնարհ յերկիր։ Եւ տեսի զի ոչ գոյ
բարի, բայց թէ ուրախ լիցի մարդ յա-
րարածս իւր, զի այն է բաժին նորա․
զի ո՞վ ածիցէ զնա տեսանել զայն ինչ
որ յետ նորա լինիցի։

ԳԼ․ Դ

1 Դարձայ եւ տեսի ես զամենայն [9]զրպար-
տութիւնս որ լինին ընդ արեգակամբ,
եւ ահա արտասուք [10]զրպարտելոյն, եւ
ոչ ոք էր որ մխիթարէր զնոսա․ եւ ի
ձեռս [11]զրպարտչաց նոցա բռնութիւնք"։
2 Եւ գովեցի ես զամենայն մեռեալսն որք
յառաջագոյն մեռան, քան զկենդանիսն՝
3 որ ցայժմ կենդանի իցեն։ Եւ քան զնո-
սա զերկոսին լաւ այն է՝ որ չեւ եւս
իցէ լեալ, որ ոչ ետես զամենայն արա-
րածն չար՝ որ արարաւ ի ներքոյ արե-
4 գական։ Եւ տեսի ես զամենայն վաս-
տակս եւ զամենայն [12]արութիւն արա-
րածոյն"․ զի նախանձ առն ի մերձաւորէ
իւրմէ․ սակայն եւ այն ունայնութիւն
5 է եւ [13]յօժարութիւն ոգւոյ։ Անզգամն
[14]բուռն եհար զբազկաց իւրոց, եւ ե-
6 կեր" զմարմինս իւր։ Լաւ է բուռն մի
հանգստեամբ քան զլութիւն երկուց
բռնից՝ ջանալով եւ [15]յօժարութեամբ
ոգւոյ։
7 Դարձայ ես եւ տեսի ընդունայնու-
8 թիւն ի ներքոյ արեգական։ [8]Զի մի է,
եւ ոչ կրկին․ եւ որդի եւ եղբայր ոչ
գոյ նորա․ եւ ոչ է վախճան ամե-
նայն վաստակոյ նորա․ եւ սակայն
ակն նորա ոչ յագի մեծութեամբ․
եւ արդ ո՞ւմ ջանամ ես, եւ զլանամ
զանձն իմ ի բարութենէ․ զի եւ այն
ընդունայնութիւն է եւ զբաղումն չար։

---

[1] Եբր. բայց եւ այնպէս ոչ [2] Եբր. Նա եւ [3] Կամ, զանցեալն [4] Եբր. ամպարշտութիւն, և տեղի արդարութեան՝ եւ անդ ամպարշտութիւն [5] Եբր. գոյ ժամանակ ամենայն գիտաւորութեան եւ ամենայն գործոյ [6] Եբր. յաղագս [7] Եբր. Փորձեսցէ [8] Եբր. դէպքն

[9] Եբր. զրկանս [10] Եբր. զրկելոց [11] Եբր. զրկողաց ույժ, իսկ ոչ ոք էր որ մխիթարէր զնոսա [12] Եբր. Ճարտարութիւն արարուածոյ [13] Կամ, աշխատութիւն [14] Եբր. ամփոփէ զբազուկս իւր եւ ուտէ [15] Կամ, աշխատութեամբ

9 Լաւ են երկու քան զմի, որոց գոն
10 վարձք բարի ի վաստակս նոցա։ Զի ե-
թէ գլորեսցի մին՝ կանգնեսցէ զնա ըն-
կեր իւր. եւ վա՜յ միումն յորժամ գլո-
րեսցի, եւ ոչ գուցէ մեւս՝ որ յարուցա-
11 նիցէ զնա։ Զի եթէ ննջիցեն երկու՝
ջեռուցանեն զմիմեանս, եւ մին զիա՞րդ
12 ջեռնուցու։ Եւ եթէ բռնասցի [1]մին՝ եր-
կուքն կայցեն ընդդէմ նորա. եւ առա-
սան երեքկին՝ ոչ վաղվաղակի խզեսցի։
13 Լաւ է մանուկ աղքատ եւ իմաստուն՝
քան զթագաւոր ծեր եւ անմիտ, որ ոչ
14 [2]իմացաւ հայել եւս, ,Եթէ" ի տանէ կա-
պանաց ելանիցէ թագաւորել. նա ի թա-
գաւորութեան իւրում եղեւ աղքատ։
15 Տեսի ես զամենայն կենդանիս որ գնան
ի ներքոյ արեգականն, հանդերձ երկրա-
սարդաւն երկրորդաւ որ յարիցէ փոխա-
16 նակ նորա։ Ոչ գոյ [3]կատարումն ամե-
նայն ժողովրդեանն, ամենեցուն որք
եղեն յառաջ քան զնոսա. նա եւ յե-
տինքն ոչ լինիցին ուրախ ի վերայ նո-
րա. զի եւ այն ինքն ունայնութիւն է
եւ [4]յօժարութիւն ոգւոյ։
17 Զգուշացիր ոտին քում [5]որում երթայ-
18 ցես ի տուն Աստուծոյ. Եւ մերձ լեր ի
լսել, [6]քանզի պատուական է քան զպատարագ
անզգամաց՝ զոհ քո", զի ոչ եթէ գիտակ
ինչ են [7]առնելոյ բարիս"։

## ԳԼ. Ե

1 Մի՛ փութար բերանով քով, եւ մի՛
վաղվաղեսցէ սիրտ քո հանել բանս ա-
ռաջի Աստուծոյ, զի Աստուած յերկինս
է եւ դու յերկրի. վասն այնորիկ եղի-
2 ցին բանք քո սակաւք։ Զի հասանէ ե-
րազ ի բազմութեան [8]փորձութեան, եւ
ձայն անզգամի ի բազմութեան բանից։
3 Եւ որպէս ինչ եւ ուխտիցես դու Աս-
տուծոյ, մի՛ յամեսցես հատուցանել զնա.
զի ոչ [9]են կամք ի ձեռս անզգամաց".
4 դու որչափ ուխտիցես՝ հատո. Զի լաւ
է քեզ չուխտել, քան ուխտել եւ ոչ
5 հատուցանել։ Մի՛ տար զբերան քո առ
ի յանցուցանելոյ զմարմին քո. եւ մի՛
ասեր առաջի [10]Աստուծոյ թէ Անգիտու-
թիւն է. զի մի՛ բարկասցի Աստուած ի
բարբառ քո, եւ սատակեսցէ զգործս
6 ձեռաց քոց։ Վասն զի ըստ յաճախու-
թեան երազոց է եւ ընդունայնութիւն
բանից բազմաց. սակայն դու երկի՛ր յԱս-
7 տուծոյ։ Եթէ [11]զզրկութիւն տնանկի
եւ զյափշտակութիւն իրաւանց եւ արդա-
րութեան տեսանիցես յերկրի, մի՛ զար-
մանայցես ի վերայ իրայն. զի [12]բարձր
ի վերայ բարձու պահէ, եւ բարձունք
ի վերայ նոցա, եւ յաճախութիւն հո-
8 ղոյ։ Ի վերայ ամենայնի՝ է թագաւոր
ի վերայ անդոյն գործելոյ. եւ լիջիր
դու հաւատարիմ յամենայնէ ի ծանր
յափշտակելոյ անտի։"
9 Որ սիրէ զարծաթ՝ ոչ յագեսցի ար-
ծաթով, եւ [13]որ սիրեաց ի բազմութեան
իւրում զարդիւնս. քանզի եւ այն ու-
10 նայնութիւն է։ Ի բազմութեան արդա-
րութեան յաղեցան որք ուտէին զնա.
եւ զի՞նչ արութիւն է նմա առ ի նմա-
նէ, զի սկիզբն տեսանելոյ՝ աչք իւր
11 են։" Քաղցր քուն է աշխատաւորի՝ ե-
թէ սակաւ եւ եթէ շատ կերիցէ. եւ
որ յագին մեծանալոյ՝ չէ նմա համար-
ձակ ի քուն մտանել։
12 Է [14]խրատ մի" զոր տեսի ի ներքոյ ա-
րեգական. մեծութիւն պահեալ ումեք
13 առ ի նմանէ չարոյ իւրում. Եւ կորիցէ
մեծութիւն նորա՝ [15]եւ նա" ի զբաղման
չարի [15]է. ծնաւ որդի՝ եւ ոչ գոյ ի ձե-
14 ռին նորա եւ ոչ ինչ։ Որպէս ել յորո-
վայնէ մօր իւրոյ մերկ, դառնայ երթալ՝
որպէս եւ եկեալն էր, եւ ոչ ինչ առցէ
ի վաստակոյ իւրմէ, եթէ երթիցէ ի ձե-
15 ռին իւրում։ Նա եւ այն իսկ ախտ չար է,
զի որպէս եկն՝ նոյնպէս եւ երթիցէ. եւ
զի՞նչ օգուտ լիցէ նմա ի վաստակոց ան-
16 տի զոր ջանայ նա հողմոյ։ Զի [16]ամե-
նայն աւուրք նորա խաւար եւ սուգ",
եւ ի բազում սրտմտութեան եւ ի հիւան-
17 դութեան եւ ի բարկութեան։ Արդ ա-

[1] Եբր. որ [2] Եբր. գիտէ խրատել եւս. (14) Զի ատ [3] Եբր. վախճան [4] Կամ, աշխատութիւն [5] Կամ, յորժամ [6] Եբր. քան մատուցանել զզոհ անզգամաց [7] Եբր. թէ առնեն չարիս [8] Եբր. զբաղմանց [9] Եբր. հաճի ընդ անզգամս [10] Եբր. հրեշտակի

[11] Եբր. զզրկանս [12] Եբր. բարձրն քան զբարձր հսկէ, եւ գոյ Բարձրագոյն քան զնոսա. (8) Եւ շահեկանութիւն երկրի յամենեսին նոյն. թագաւորն իսկ յանդոյ պաշտի [13] Եբր. ոչ որ սիրէ զմեծութիւն՝ արդեամբք. եւ այն ունայնութիւն է։ (10) Ի յաճախել բարեաց՝ յաճախեն եւ որ ուտեն զնոսա. և զի՞նչ շահ տերանց նոցա, եթէ ոչ տեսանել աչօք իւրեանց։ [14] Եբր. ախտ չար [15] Եբր. [illegible] [16] Եբր. զամենայն աւուրս իւր ի խաւարի կերաւ

ւասիկ զոր տեսի ես՝ բարի [1]է ուտելն
եւ ըմպել, եւ տեսանել զբարութիւն
յամենայն վաստակս իւր՝ զոր ջանայցէ
ընդ արեգակամբ ի թիւ աւուրց կենաց
իւրոց զոր ետ նմա Աստուած. զի այն
18 է բաժին նորա։ Քանզի ամենայն մարդ՝
որում ետ նմա Աստուած մեծութիւն
եւ ինչս, եւ իշխան արար զնա ուտել
ի նոցանէ, եւ առնուլ զբաժին իւր եւ
ուրախ լինել ի վաստակս իւր, այն պար-
19 գեւ Աստուծոյ է։ Զի բազում աւուրս
յիշեսցէ զկենաց իւրոց. զի Աստուած
[2]զբօսացուցանէ զնա" յուրախութեան
սրտի իւրոյ։

## Գլ. Զ

1 Է չարութիւն զոր տեսի ի ներքոյ ա-
րեգական, եւ բազում է յոյժ ի վերայ
2 մարդոյ։ Այր մի որում տացէ Աստուած
մեծութիւն եւ ինչս եւ փառս, եւ ոչ
ինչ պակաս իցէ անձին իւրում յամե-
նայնէ որում ցանկանայցէ. եւ ոչ տա-
նիցէ զնա Աստուած իշխան ուտել ի
նմանէ, զի այր օտար կերիցէ զնա. եւ
այն ընդունայնութիւն է եւ ախտ չար։
3 Եթէ ծնցի այր [3]հարեւր, եւ ամս բա-
զումս կեցցէ, եւ եւս բազում եղիցին
աւուրք ամաց նորա, եւ անձն նորա ոչ
յագեսցի ի բարեաց անտի, եւ գերեզ-
ման եւս ոչ գտցի նմա, ես ասացի թէ
4 լաւ է քան զնա վիժածն. Զի ունայ-
նութեամբ եկն եւ խաւարաւ գնաց, եւ
5 ի խաւարի անուն նորա ծածկեսցի. Քան-
զի զարեւ ոչ ետես, եւ ոչ գիտաց, [4]զինչ
6 է հանգիստ սորա քան զնորա"։ Եւ եթէ
եկաց նա զհազար ամաց [5]եկս, եւ զբա-
րութիւն ինչ ոչ ետես, միթէ ո՞չ եր-
թայցէ ամենայն ի մի տեղի։
7 Ամենայն ջան մարդոյ ի բերան իւր, եւ
8 սակայն անձն նորա ոչ յագեսցի։ Զի՞նչ
առաւելութիւն է իմաստնոյն քան զան-
միտն, [6]քանզի անանկն գիտէ երթալ ա-
9 ռաջի կենաց իւրոց"։ Լաւ է տեսիլ աչաց
քան [7]զգնացեալն ոգւով. սակայն եւ այն
ունայնութիւն է եւ [8]յօժարութիւն ոգւոյ։
10 Որ ինչ եղեւն՝ ահա անուն կոչեցեալ
է նմա. եւ յայտնի [9]եղեւ որպիսի ինչ"
է մարդ, եւ ոչ կարէ դատել ընդ հզօ-
11 րին քան զնա։ Զի են բազում բանք՝
որ յաճախեն զընդունայնութիւնս. զի՞նչ
առաւելութիւն է մարդոյ։

## Գլ. Է

1 Զի ո՞ գիտէ զինչ բարի է մարդոյ ի
կեանս իւրում ի թիւ աւուրց կենաց
ընդունայնութեան նորա, եւ արար
զայն ի ստուերի. զի ո՞վ է որ պատմես-
ցէ մարդոյն՝ զինչ լինելոց է զկնի նորա
2 ընդ արեգակամբ։ Բարի է անուն բարի
քան զեւղ բարի, եւ օր մահուան ի-
րոյ՝ քան զօր ծննդեան իւրոյ։
3 Բարի է երթալ ի տուն սգոյ՝ քան
երթալ ի տուն արբեցութեան, վասն
զի այն է կատարած ամենայն մար-
դոյ. եւ որ կենդանի է [10]տացէ բա-
4 րութիւն ի սիրտ իւր"։ Լաւ է սրտմտու-
թիւն քան զծաղր, զի [11]չարութեամբ
5 երեսաց զուարթասցի սիրտ։ Սիրտ ի-
մաստնոյ ի տան սգոյ, եւ սիրտ անմտի
ի տան ուրախութեան։
6 Լաւ է լսել զպատուհաս իմաստնոյ, քան
7 լսել մարդոյ զերգս անմտաց։ Զի որպէս
զձայն փշոց ի ներքոյ կաթսայի՝ այնպէս
ծաղր անմտաց. սակայն եւ այն ընդունայ-
8 նութիւն է։ [12]Զրպարտութիւն ծփեցու-
ցանէ զիմաստունս եւ կորուսանէ զսիրտ
9 ազնուութեան նորա։" Բարի է կատա-
րած բանից՝ քան զսկիզբն իւրեանց.
բարի է երկայնամիտ՝ քան զհպարտա-
10 ցեալն ոգւով։ Մի՛ փութար յոգի քո
բարկանալ, զի բարկութիւն ի ծոց
11 անզգամաց հանգիցէ։ Մի՛ ասիցես Զի՞նչ
եղեւ, զի աւուրքն առաջինք բարի ե-
ղեն քան զայսոսիկ. զի ոչ իմաստու-
թեամբ հարցեր վասն այգորիկ։
12 Բարի է իմաստութիւն ընդ ժառան-
գութեան, եւ [13]յաւելուած որոց տեսանեն
13 զարեգակն. Զի [14]ընդ հովանեաւ նորա
իմաստութիւն է իբրեւ զհովանի ար-
ծաթոյ. եւ" առաւելութիւն գիտու-
թեան իմաստութեան կենդանացուցէ
զայն որ [15]առ ի նմանէ"։
14 Տես զգործս Աստուծոյ, զի ո՞վ է այն որ

---

[1]Եբր. է եւ գեղեցիկ [2]Եբր. տայ պատասխանի [3]Իմա՝ հարեւր որդիս [4]Եբր. հանգիստ է սմա քան նմա [5]Եբր. երկիցս [6]Եբր. զի՞նչ առաւելոյն որ գիտէ գնալ ի մէջ կենդանեաց [7]Եբր. գնալ [8]Կամ՝ աշխատութիւն [9]Եբր. է թէ

[10]Եբր. դիցէ ի սրտի իւրում [11]Եբր. տրտմութեամբ [12]Եբր. Քանզի զրկանք յիմարեցուցանեն զիմաստունն, եւ կորուսանեն զսիրտ կաշառք։ [13]Եբր. ազնուագոյն [14]Եբր. ապաւէն է իմաստութիւն, ապաւէն է արծաթ. իսկ [15]Եբր. տէրն է նորա

կարօղ լինիցի զարդարել՝ զոր Աստուածն
15 խանգարիցէ ։ Յաւուր բարութեան կեց-
ջիր ի բարիս, եւ տես յաւուր չարու-
թեան. [1]տես, սակայն նմին միւսոյն
զայն արար Աստուած վասն խօսից, զի՞
մի՛ գտցէ մարդ զկնի իւր եւ մի՛ ինչ ։
16 Զամենայն ինչ տեսի յաւուրս ունայ-
նութեան իմոյ. է արդար կորուսեալ
յարդարութեան իւրում, եւ է ամպա-
րիշտ՝ որ կայ չարութեամբ իւրով ։
17 Մի՛ կարի արդար լինիր, եւ մի՛ ճար-
տարեր առաւել, [2]զի մի՛ թիւրեսցիս՞ ։
18 Մի՛ ամպարշտեր կարի, եւ մի՛ լինիր
19 [3]խիստ՝ զի մի՛՞ տարաժամ մեռցիս ։ Բա-
րի է եթէ [4]ի կողմն այսորիկ լինիցիս.
սակայն եւ յայսմիկ մի՛ պղծեր՞ զձեռն
քո. զի որ երկնչի յԱստուծոյ՝ ելցէ
ընդ ամենայն ։
20 Իմաստութիւն օգնեսցէ իմաստնոյն
քան զտասն իշխան որ իցեն ի քաղաքի ։
21 Զի մարդ ոչ գոյ արդար ի վերայ երկ-
րի՝ որ գործէ զբարիս, եւ ոչ մեղան-
22 չիցէ ։ Սակայն զամենայն բանս զոր խօ-
սիցին [5]ամպարիշտք՝ մի՛ դներ ի սրտի
քում. զի մի՛ լուիցես դու անէծս ի ծա-
ռայէ քումմէ՝ որ զքեզ անիծանիցէ ։
23 Զի բազում անգամ [6]չարահաւեսցի ընդ
քեզ, եւ ի նուագս բազումս չարչարես-
ցէ զսիրտ քո. սակայն եւ դու մի՛ ա-
24 նիծաներ այլոց ։՞ Զայս ամենայն փորձե-
ցի ես իմաստութեամբ, եւ ասացի՝ Բա՛
իմաստնացայց. եւ նա հեռացաւ յինէն ։
25 [7]Հեռագոյն քան որպէս էրն՞ եւ զխո-
րութիւն խորոց ո՞վ կարասցէ գտանել ։
26 Շուրջ եկի ես եւ սիրտ իմ ճանաչել,
նա եւ խորհել եւ խնդրել զիմաստու-
թիւն եւ զհանճար, եւ գիտել [8]զամ-
պարշտի զուրախութիւն եւ զլկանս եւ
27 զծփանս. Եւ գտի ես զնա, եւ ասեմ,
թէ Դառն է քան զմահ կնաւն հան-
գերձ. որ է որս եւ թակարդ սրտի նո-
րա, եւ կապանք ի ձեռս՞ նորա. բա-
րին առաջի երեսաց Աստուծոյ զերծցի

ի նմանէ, եւ որ մեղաւորն է՝ ըմբռնես-
28 ցի ի նմա ։ Ահա զայս [5]ամենայն գտի,
ասէ Եկղեսիաստէս. [9]մի միոյ գտանել
29 խորհուրդս, Զոր խնդրեաց՞ անձն իմ,
եւ ոչ գտի. այր մի ի հազարաց գտի,
30 բայց կին ամենեւին ոչ ։ Ահա արդ զայս
գտի, զի արար Աստուած զմարդն ու-
ղիղ, եւ նոքա խնդրեցին [10]զխորհուրդս
չարութեան՞ ։

Գլ. Ը

1 Ո՞վ [11]գիտէ զիմաստունս՞, եւ ո՞վ գիտէ
զմեկնութիւն բանից ։ Իմաստութիւն
առն՝ լուսաւոր առնէ զերեսս իւր, եւ
[12]որ ժպիրհն է երեսօք իւրովք՝ ատելի
2 լիցի ։ Բերանոյ՞ թագաւորի զգուշ լեր, եւ
3 ի բան երդման Աստուծոյ ։ Մի՛ փութա-
ցիցես յերեսաց նորա գնալ, եւ մի՛
կացցես ի բանի չարի. զի զամենայն զոր
4 ինչ կամիցի՝ արասցէ ։ [13]Որպէս զթագա-
ւոր իշխանութեամբ խօսի՞, եւ ո՞վ կա-
5 րէ ասել ցնա թէ Զի՞նչ գործեցեր ։ Որ
պահէ զպատուիրան՝ ոչ գիտասցէ զբան
չարութեան. եւ [14]ժամանակ իրաւանց՞
6 ճանաչէ սիրտ իմաստնոյ ։ Զի ամենայն
[15]իրաց ժամանակ է եւ իրաւունք, զի
[16]գիտութիւն մարդոյ բազում է ի վերայ
7 նորա ։ Քանզի ոչ գիտէ զինչ լինելոց է.
զի որպէս ինչ լինելոց իցէ՝ ո՞վ պատ-
մեսցէ նմա ։
8 Ոչ է մարդ իշխան ոգւոյ՝ արգելուլ
զոգի, եւ ոչ գոյ իշխանութիւն [5]նորա
յաւուր մահուան. եւ ոչ [17]գոյ հրեշտա-
կութիւն յաւուր՞ պատերազմի, եւ ոչ
ապրեցուսցանէ ամպարշտութիւն [18]զմեր-
9 ձաւորս իւր ։ Զամենայն զայս տեսի, եւ
ետու զսիրտ իմ յամենայն արարածս որ
արարեալ են ի ներքոյ արեգական. [19]ո-
րում միանգամ իշխան եղեւ մարդն ի
10 վերայ մարդոյ չարչարել զնա՞ ։ Եւ այսպ
տեսի ես ամպարիշտս մուծեալս ի գե-
րեզմանս. եւ ի սրբոց անտի գնացին,

---

[1] Եբր. Նա եւ զայս հակառակ այնմ արար Աստուած, վասն այնորիկ [2] Եբր. ընդէ՞ր կործանեսցիս [3] Եբր. անզգամ. ընդէ՞ր [4] Եբր. բուռն հարցես զմիոյն, եւ ի միւսմէն մի՛ ի բաց կայցես [5] Յ Եբր. դ—ի—է [6] Եբր. գիտէ սիրտ քո եթէ դու եւս անիծեր զայլս ։ [7] Եբր. Զհեռին թէ զի՞նչ իցէ, [8] Եբր. զամպարշտութիւն անզգամութեան, եւ զանմտութիւն յիմարաց. (27) Եւ գտի ես դառն քան զմահ զկին, որոյ վարմ եւ թակարդ սիրտ նորա, կապանք ձեռք

[9] Եբր. մի առ մի համարեալ գտանել զհաշիւն, (29) Զոր տակաւին խնդրէ [10] Եբր. բազում հնարս [11] Եբր. իցէ իբրեւ զիմաստունն [12] Եբր. ժպրհութիւն երեսաց նորա փոխեսցի։ (2) Բում, բերանոյ [13] Եբր. Զի բան թագաւորի իշխան է [14] Եբր. զժամանակ եւ զիրաւունս [15] Եբր. կամաց [16] Եբր. եղեան [17] Եբր. արձակումն ի [18] Եբր. զտացիչս [19] Եբր. գոյ ժամանակ զի իշխէ մարդ ի վերայ մարդոյ՝ չարոյ իւրում

եւ [1]սուգ առին ի քաղաքին, զի՛ այն-
պէս արարին. սակայն եւ այն ընդու-
նայնութիւն է։
11 [2]Զի ոչ գոյ ընդդէմ զառնոյ յանդգանէ
որ վաղվաղակի գործեն զչար, վասն
այնորիկ համարձակեցան՝ սիրտք որդ-
ւոց մարդկան յանձինս իւրեանց գոր-
12 ծել զչար։ [3]Որ մեղաւն արար զչարիս,
յայսմհետէ եւ ի վաղնջուց. քանզի գի-
տեմ եւ ես զինչ է բարին երկիւղածաց
Աստուծոյ, զի երկնչիցին նոքա՝ յերե-
13 սաց նորա։ Եւ ոչ ինչ գոյ բարի ամ-
պարշտի, եւ ոչ յերկարեսցէ աւուրս՝
իբրեւ [4]ընդ հովանեաւ նորա որ՝ ոչ է
երկիւղած յերեսաց Աստուծոյ։
14 Գոյ ընդունայնութիւն որ եղեալ է ի
վերայ երկրի. զի են արդարք՝ որոց ժա-
մանեն առ նոսա գործք ամպարշտաց,
եւ են ամպարիշտք զի հասանեն նոցա
իբրեւ զգործս արդարոց. եւ ասացի ես
թէ Սակայն եւ այն ընդունայնութիւն
15 է։ Եւ գովեցի ես զուրախութիւն, զի
ոչ է բարի մարդկան ի ներքոյ արեգա-
կան, բաց յուտելոյ եւ յըմպելոյ եւ յու-
րախ լինելոյ. եւ այն երթայ ընդ նմա
ի ջանսլ նմա զաւուրս կենաց իւրոց,
որչափ ետ նմա Աստուած ի ներքոյ ա-
րեգական։
16 [5]Յոր միանգամ՝ ետու զսիրտ իմ գի-
տել զիմաստութիւն, եւ տեսանել զզբա-
ղումն որ արարեալ է ի վերայ երկրի.
(զի ի տուէ եւ ի գիշերի քուն յաչս նո-
17 րա ոչ է տեսանել.) Եւ տեսի ես զա-
մենայն արարածս Աստուծոյ, զի ոչ կա-
րասցէ մարդ գտանել զարարածն արա-
րեալ ի ներքոյ արեգական. զոր միանգամ
ջանասցի մարդ խնդրել՝ եւ ոչ գտցէ.
քանզի որչափ ասասցէ իմաստունն գի-
տել՝ ոչ կարասցէ գտանել։

ԳԼ. Թ

1 Զի զամենայն զայս ետու ի սիրտ իմ,
[6]եւ սիրտ իմ ետես՝ զայս ամենայն. որ-
պէս արդարքն եւ իմաստունքն, եւ
գործք նոցա ի ձեռս Աստուծոյ. [7]քան-
զի զսէր եւ զատելութիւն ոչ գիտէ
մարդն. ամենայն ինչ առաջի երեսաց
2 [8]նորա է։ Եւ ունայնութիւն է յամենայ-
նի. պատահար է՝ յարդարն եւ յամ-
պարիշտն, ի բարին եւ ի չարն, ի սրբումն
եւ ի պղծում, որ մատուցանէ պատա-
րագ՝ եւ որ ոչն մատուցանէ. որպէս որ
բարին է՝ եւ որպէս որ մեղանչէն, որպէս
որ երդնուն՝ եւ որպէս որ յերդմանէն
3 երկուցեալ է։ Այս է որ չարն է յամե-
նայնի՝ որ արարեալն է ընդ արեգա-
կամբ, զի պատահար [9]է յամենայնի.
քանզի սիրտ որդւոց մարդկան լի եղեւ
չարութեամբ, եւ [10]զբաղումն ի սիրտս
նոցա ի կենդանութեան իւրեանց, եւ
4 [11]զկնի նոցա՝ առ մեռեալսն։ Քանզի ո՞վ
են՝ որ հաղորդեն առ ամենայն կեն-
դանիս. գոյ յոյս թէ շուն որ կենդանի է՝
5 լաւ է քան զառեւծ մեռեալ։ Քանզի
որ կենդանիքն են՝ գիտեն նոքա թէ մե-
ռանելոց են. եւ մեռեալքն ոչ են գի-
տակ եւ ոչ ինչ. եւ ոչ եւս գոն նոցա
6 վարձք՝ զի մոռացաւ յիշատակ նոցա. Եւ
սէր իսկ նոցա եւ ատելութիւն նոցա եւ
նախանձ նոցա առա կորեաւ, եւ բաժին
իսկ ոչ գոյ նոցա յաւիտեանս յամենայնի
յայսմիկ՝ որ արարեալ են ընդ արեգակամբ։
7 Եկ կեր ուրախութեամբ զհաց քո, եւ
արբ սրտիւ զուարճացելով զգինի քո. զի
արդէն իսկ հաճեցաւ Աստուած ի գործս
8 քո։ Յամենայն ժամ եղիցին ձորձք քո
սպիտակ, եւ եւղ ի գլխոյ քումէ մի
9 պակասեսցէ։ Եւ տես կեանս ընդ կնոջ քո՝
զոր սիրեցեր զամենայն աւուրս կենաց
ընդունայնութեան քո, որ տուեալ է քեզ
ընդ արեգակամբ [12]մինչեւ յաւուրս վախ-
ճանի՝ քո. զի այն է բաժին քո ի կեանս
քո, եւ ի վաստակս զոր վաստակես ի
10 ներքոյ արեգական։ Զամենայն ինչ որ ինչ
գտցէ ձեռն քո գործել, որչափ ի կարի
քում իցէ՝ գործեսջիր. զի ոչ գործ եւ խոր-
հուրդ եւ գիտութիւն եւ իմաստութիւն
եղիցին ի դժոխս յոր դու երթալոցն ես։
11 Դարձայ եւ տեսի ի ներքոյ արեգական,
զի ոչ թեթեւաց են ընթացք, եւ ոչ
զօրաւորաց պատերազմ, եւ ոչ իմաստ-
նոց հաց, եւ ոչ հանճարեղաց մեծու-
թիւն, եւ ոչ գիտնոց շնորհք. զի ժա-

[1] Եբր. մոռացօնք եղեն նոքա ի քաղաքին յորում
[2] Եբր. Զի ոչ առնի վճիռ գործոց չարաց վաղվաղակի, վասն այնորիկ լի են [3] Եբր. Եթէ մեղաւորն առնիցէ չարիս հարիւրիցս եւ յերկարեսցի նմա, գիտեմ ես ապաքէն եթէ լիցի բարի երկիւղածաց Աստուծոյ որ երկնչիցին [4] Եբր. ստուեր, զի [5] Եբր. Յորժամ ետու [6] Եբր. ի քննել [7] Եբր. Նա եւ

[8] Եբր. նոցա է։ (2) Ամենայն, որպէս ամենեցուն, պատահար մի է, [9] Եբր. մի է [10] Եբր. անմտութիւն [11] Կամ յետ այնորիկ [12] Եբր. յամենայն աւուրս ընդունայնութեան

մանուկ եւ պատանար պատահէ ամենե-
12 ցուն նոցա ։ Քանզի ոչ եւս գիտաց մարդն
զժամանակ իւր . որպէս ձկունք որսա-
ցեալք ցանցիւք չարեօք , եւ որպէս
թռչունք որսացեալք ի ծուղակս , նոյն-
պէս հարկանին յորդայթս որդիք մարդ-
կան ի ժամանակի չարի՝ յորժամ հասա-
նիցէ ի վերայ նոցա յանկարծակի ։
13 Սակայն եւ զայս իմաստութիւն
տեսի ի ներքոյ արեգական , եւ մեծ թուի
14 ինձ ։ Քաղաք փոքր՝ եւ եղեն ի նմա արք
սակաւք , եւ գայցէ ի վերայ նորա թա-
գաւոր մեծ եւ պատիցէ զնա , եւ շինի-
ցէ ի վերայ նորա պատնէշս մեծամեծս ։
15 Եւ գտցի ի նմա այր մի տնանկ եւ ի-
մաստուն եւ ապրեցուցանիցէ նա զքա-
ղաքն իմաստութեամբ իւրով , եւ մարդ
16 ոչ յիշեաց զայրն զայն տնանկ ։ Եւ ա-
սացի ես , Բարի է իմաստութիւն քան
զզօրութիւն . *եւ իմաստութիւն տնան-
կին արհամարհեալ է , եւ բանք նորա
ոչ լինին լսելի ։
17 Բանք իմաստնոց մեղմով լսին քան
զաղաղակ [1]իշխանաց անզգամութեամբ՝՝։
18 Բարի է իմաստութիւն քան զանօթս պա-
տերազմի , եւ յանցաւոր մի կորուսանէ
[2]զօրութիւնս բազումս ։

## ԳԼ. Ժ

1 Ճանճք մեռեալք զազրացուցանեն զեւղս
անուշունս . [3]պատուական է սակաւիկ
ինչ յիմաստութենէ , քան զմեծ փառս
2 անմտութեամբ՝՝։ Սիրտ իմաստնոյ յաջա-
կողմ իւր , եւ սիրտ անմտի ի ձախա-
3 կողմ իւր ։ [4]Քանզի եւ ի ճանապարհի
յորժամ գնայցէ անմիտն , սիրտ նորա
պակասեսցի , եւ [5]զոր ինչ խորհի՝ ամե-
4 նայն անմտութիւն՝՝ է ։ Եթէ հոգի իշ-
խանին ելցէ ի վերայ քո՝ մի՛ թողուր
զտեղի քո . զի ողոքումն դարձուցանէ
զմեղս մեծամեծս ։
5 Է չարութիւն զոր տեսի ի ներքոյ ա-
րեգական , որ իբրեւ [6]յակամայ կամս՝՝
6 ել յերեսաց իշխանին ։ Տուաւ անմիտն
ի բարձրութիւնս մեծամեծս , եւ մեծա-
7 տունք ի խոնարհութեան նստցին ։ Տե-
սի ես զծառայս հեծեալս ի ձիս , եւ իշ-
խանս՝ զի գնային իբրեւ զծառայս յերկրի ։
8 Որ փորէ խորխորատ՝ ի նոյն անկցի ,
եւ որ քակէ զցանգ՝ հարցէ զնա օձ ։
9 Եւ որ բառնայ քարինս՝ նոքիմբք չար-
չարեսցի , եւ որ պատառէ փայտ՝ նովին
10 ճգնեսցի ։ [7]Եթէ անկցի եւս երկաթն՝ եւ
նա արտաքոյց զերեսս իւր . եւ զօրու-
թիւնք զօրացուցանեն, եւ է առաւելու-
թիւն քաջ իմաստութեանն ։՝՝
11 Եթէ հարցէ օձ [8]ի թովել , ոչ ինչ է ա-
12 ռաւելութիւն թովչին ։ Բանք բերանոյ
իմաստնոյ՝ շնորհք , եւ շրթունք անմտի
13 ընկղմեն զնա ։ Սկիզբն բանից բերանոյ
նորա՝ անմտութիւն , եւ փախճան նորա՝
14 ծուփ չարութեան ։ Եւ որ անմիտն է
յաճախէ զբանս . ոչ գիտէ մարդ զինչ
եղեալ է , եւ զինչ լինելոց է [9]զի
15 զկնի նորա՝՝ ո՞վ պատմեսցէ նմա ։ Ջան
անմտին չարչարեսցէ զնա , որ ոչ գի-
տաց երթալ ի քաղաք ։
16 Վա՜յ քեզ , [10]քաղաք , որոյ թագաւոր
քո մանուկ է , եւ իշխանք քո ընդ ա-
17 ռաւօտս ուտեն ։ Երանի քեզ , երկիր ,
որոյ թագաւոր քո որդի ազատի է , եւ
իշխանք քո ի ժամու ուտեն [11]զօրու-
թեամբ՝ եւ ոչ ամաչեսցեն՝՝։
18 Ի վատութեան խոնարհեսցին հեծա-
նաձգութիւնք , եւ ի դատարկութեան
19 ձեռաց կաթեսցէ տունն ։ Ի ծաղր առնեն
զհաց , եւ զգինի [12]եւ եւղ ուրախ առ-
նեն զկենդանիս . եւ արծաթոյ լուիցէ
ամենայն ինչ՝՝։
20 Սակայն եւ ի մտի քում մի՛ անիծա-
ներ թագաւորի , եւ ի շտեմարանս սե-
նեկաց քոց մի՛ անիծաներ մեծի . զի
թռչունք երկնից հասուցանեն զբարբառ
քո , եւ որոյ թեւք են՝ պատմեն զբան քո ։

## ԳԼ. ԺԱ

1 Առաքեա զհաց քո ի վերայ երեսաց
ջրոց , զի ի բազմութեան աւուրց [9]քոց
2 գտցես զնա ։ Տուր բաժին եւթանց , այլ
եւ ութից , վասն զի ոչ գիտես զինչ
3 լինիցի չար ի վերայ երկրի ։ Թէ լցցին
ամպք անձրեւով՝ ի վերայ երկրի հե-
ղուն . եւ եթէ անկցի փայտն ի հարաւ

*Իմ՝ թէպէտեւ [1]Եբր. իշխանի ի մէջ անզգամաց [2]Եբր. բարութիւնս [3]Եբր. [illegible] յիմարութիւն սակաւ՝ զպատուականն իմաստութեամբ և փառօք [4]Եբր. Նա [5]Եբր. ասէ ցամենեսին թէ անմիտ [6]Եբր. վրիպակաւ

[7]Եբր. Եթէ բթասցի երկաթն և նա ոչ թեքեսցէ զսայր նորա, ինքն սաստկացուսցէ զոյժ, եւ իմաստութեան է առաւելութիւն ուղղելոյ ։ [8]Եբր. մինչչեւ թովեալ իցէ [9]Յ Եբր. գտանես [10]Եբր. երկիր [11]Եբր. ի զօրութիւն եւ ոչ յարբեցութիւն [12]Եբր. ուրախ առնէ զկեանս, եւ արծաթ տացէ պատասխանի ամենեցուն

*եւ կամ ի կողմն հիւսիսոյ , ուր անկցի
փայտն անդ կացցէ ։
4 Որ խուրէ զհողմն՝ ոչ սերմանէ, եւ որ
5 հայի ընդ ամպս՝ ոչ հնձեսցէ ․ [1]Որովք ոչ
է հնար գիտել՝՝ զինչ է ճանապարհ հող-
մոյ , [2]իբրեւ զոսկերս յարգանդի յղւոյ ,
նոյնպէս ոչ գիտասցես դու զարարածս
Աստուծոյ զոր ինչ առնիցէ նա զամե-
6 նայն ։ Ընդ առաւօտս սերմանեսջես
զսերմն քո , եւ ընդ երեկոյս մի լքցին
ձեռք քո ․ զի ոչ գիտես՝ ո՛ր պատահա-
նիցի , այս՝ թէ այն , կամ թէ երկոքեան
7 ի միասին բարի իսկ է ։ Քաղցր է լոյս ,
եւ բարի աչաց տեսանել զարեգակն ․
8 Զի թէ ամս բազումս կեցցէ մարդ , եւ
յամենայն ի նոսա ուրախ լինիցի , եւ
յիշեսցէ նա զաւուրս խաւարի , զի բա-
զում լիցին ․ ամենայն ինչ որ գալոցն է
ընդունայնութիւն է ։
9 Ուրախ լեր , երիտասարդ , ի մանկու-
թեան քում , եւ զուարճասցուսցէ զքեզ
սիրտ քո յաւուրս [3]մանկութեան քո ․
եւ գնա դու ի ճանապարհս սրտի քո
[4]անբիծ , եւ ի տեսիլ աչաց քոց․ եւ գի-
տասցես թէ վասն այսր ամենայնի ածցէ
10 զքեզ Աստուած ի դատաստան ։ Եւ ի բաց
արա [5]զբարկութիւն ի սրտէ քումմէ ,
եւ անցո զչարութիւն ի մարմնոյ քում-
մէ ․ զի մանկութիւն եւ [6]անմտութիւն
ընդունայնութիւն է ։*

## ԳԼ․ ԺԲ

*1 Եւ յիշեա դու զԱրարիչն քո յաւուրս
[3]մանկութեան քո , մինչեւ հասեալ ի-
ցեն աւուրք չարութեան , եւ հասցեն
ամք՝ յորս ասասցես , Ոչ են կամք իմ
2 ի դոսա ։ Մինչեւ խաւարեալ իցէ արե-
գակն եւ լոյս եւ լուսին եւ աստեղք ,
եւ դարձցին ամպք զկնի անձրեւաց ․
3 Յաւուր յորում շարժեսցին պահապանք
տանն , եւ թիւրեսցին արք զօրութեան ,
եւ դադարեսցին աղօրիք զի նուազե-
ցան , եւ խաւարեսցին որք տեսանեն
4 ընդ [7]ծակս ․ Եւ փակեսցեն զդրունս՝՝ ի
հրապարակս ի տկարութենէ ձայնի ա-
ղօրւոյն , եւ յարիցեն ի ձայն հաւուն ,
եւ նկուն լիցին ամենայն դստերք եր-
5 գոց ․ [8]Եւ ի բարձունս հայեսցին՝՝, եւ ապ-
շութիւն ի ճանապարհին ․ եւ ծաղկեսցի
նշենի , եւ թանձրասցի մարախն , եւ
[9]տարածեսցի կապարն ․ զի գնաց մարդ
ի տուն իւր յաւիտենից , եւ շուրջ եկեն
6 կոծողք ի հրապարակս ։ Մինչեւ կոր-
ծանեալ իցէ լար արծաթոյն , եւ խոր-
տակեալ մանեակ ոսկւոյն , եւ մանրեալ
սափորն յաղբեւրն , եւ ընկրկեալ անիւն
7 ի գուբն ։ Եւ դարձցի հողն յերկիր որպէս
եւ էրն, եւ հոգին դարձցի առ Աստուած
որ ետ զնա ։
8 Ունայնութիւն ունայնութեանց , ա-
սաց Ժողովողն , ամենայն ինչ ընդու-
9 նայն է ։ Եւ աւելի իմն է զի եղեւ Ժո-
ղովողն իմաստուն ․ զի ուսուցանէր ժո-
ղովրդեանն զգիտութիւն ․ եւ [10]ունկն
10 քննէ զզարդ առակաց՝՝։ Յոյժ խնդրեաց
Ժողովողն գտանել զբանս կամաց , եւ
գրել զգիրս ուղղութեան բանից ճշմար-
տութեան ։
11 Բանք իմաստնոց իբրեւ զխթան [4]ե-
զանց , եւ իբրեւ բեւեռք հարեալք [11]ի
12 մուրհակաց տուեալ ի հովուէ միոջէ ։ Եւ
[12]աւելորդ ի նոցանէ , որդեակ իմ , զգոյշ
լեր ի սահմանաց՝՝ գիրս բազումս ոչ
գոյ վախճան ․ եւ վարժ բազում՝ աշ-
խատութիւն է մարմնոյ ։
13 Եւ վախճան բանիս , զամենայն ինչ
լուր , յԱստուծոյ երկիր , եւ զպատուի-
րանս նորա պահեա ․ զի այս է մարդն
14 ամենեւին ։ Զի զամենայն արարածս
ածցէ Աստուած ի դատաստան , [13]յամե-
նայնի անսխալ արարելոցն՝՝, եթէ բարի
եւ եթէ չար ։*

[1] Եբր․ Զոր օրինակ ոչ գիտես դու [2] Եբր․ որ-պէս եւ [3] Եբր․ երիտասարդութեան [4] Յեբր․ պակասէ [5] Եբր․ զտրտմութիւն [6] Եբր․ սեւութիւն

[7] Եբր․ պատուհանս․ (4) Եւ փակեսցին դրունք [8] Եբր․ Նա եւ երկիցեն ի բարձանց [9] Եբր․ խափանեսցի [10] Եբր․ կշռեաց եւ խնդրեաց եւ յօրինեաց առակս բազումս [11] Եբր․ յաւագաց ժողովոց [12] Եբր․ մանաւանդ ի նոցանէ , որդեակ իմ, խրատեսջիր․ յօրինելոյ [13] Եբր․ ի վերայ ամենայն ծածկելոց

# ԵՐԳ ԵՐԳՈՑ

[1]ՈՐ Է

# ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՕՐՀՆՈՒԹԵԱՆՑ

## ԱՍԱՑԵԱԼ ՍՈՂՈՄՈՆԻ ԱՐՔԱՅԻ ԻՍՐԱՅԵԼԻ"

### ԳԼՈՒԽ Ա

[2]Հարսնն ասէ,"

1 ՀԱՄԲՈՒՐԵՍՑԷ զիս ի համբու-
րից բերանոյ իւրոյ. զի բարի [3]են
2 ստինք" քո քան զգինի, Եւ հոտ իւղոց
քոց [4]քան զամենայն խունկս. եւղ ա-
նոյշ հեղեալ է" անուն քո, վասն այսո-
3 րիկ օրիորդք սիրեցին զքեզ. [5]Եւ ձգե-
ցին զքեզ. զհետ հոտոյ իւղոց քոց
ընթասցուք մեք"։ [2]Օրիորդացն պատմէ
հարսն վասն փեսային՝ զոր ինչ ընդու-
նեցաւ նմա," Տարաւ զիս արքայ ի սեն-
եակ իւր։ [2]Հարսինն պատմեալ օրիոր-
դացն, եւ նոքա ասեն," Ցնծասցուք եւ
ուրախ լիցուք ի քեզ, [6]եւ սիրեսցուք
զստինս" քո քան զգինի։ [2]Օրիորդքն հար-
սինն բարբառին զնորա փեսային," Ուղ-
ղութիւն սիրեաց զքեզ։
4 [2]Հարսնն ասէ," Սեաւ եմ ես եւ գեղեցիկ,
դստերք Երուսաղեմի, իբրեւ զվրանս Կե-
դարու, եւ իբրեւ զխորանն Սողոմոնի։
5 Մի՛ հայիք ընդ իս, զի ես սեւացեալ
թխացայ, քանզի խեթիւ հայեցաւ ընդ իս
արեգակն. որդիք մօր իմոյ մարտեան
ընդ իս, եւ եդին զիս պահապան այ-
գեստանի. զի զայգին իմ ոչ պահեցի։
6 [2]Հարսնն փեսային ասէ," Պատմեա ինձ
զոր սիրեաց անձն իմ. ո՞ւր հովուես,
ո՞ւր հանգուցանես ի միջօրէի. գուցէ
լինիցիմ իբրեւ զընկեցեալն յերամակս
ընկերաց քոց։
7 [2]Փեսայն ցհարսնն ասէ," Եթէ ոչ ծանիցես
զանձն քո, գեղեցիկդ ի կանայս, ել դու
զհետ զարշապարացն հօտից, եւ արածեա
8 զուլս քո ի վրանս հովուաց։ Երիվարացն
իմոց ի կառսն Փարաւոնի նմանեցուցի
9 զքեզ, մերձաւորդ իմ։ [2]Օրիորդքն ցհարսն
ասեն," [7]Քանզի գեղեցկացան ծնօտք քո
իբրեւ զտատրակի", պարանոց քո իբրեւ
10 զմանեակս։ [8]Նմանութիւն ոսկւոյ ա-
րասցուք քեզ՝ հանդերձ կիտուածովք
11 [9]արծաթոյ, Մինչեւ արքայ ի գիրկս իւր
ընկալցի զքեզ։ Հարսնն ցէր անձնն եւ
ցփեսայն ասէ, Նարդոս" իմ ետ զհոտ
12 իւր. Ծրար ստաշխին է [10]եղբօրորդին իմ
ինձ," ի մէջ ստեանց իմոց հանգիցէ։
13 Ողկոյզ նռնոյ է [11]եղբօրորդին իմ ինձ,
14 ի մէջ այգեստանեացն Ենգադդայ։ [2]Փե-
սայն ցհարսնն ասէ," Ահաւասիկ կաս
գեղեցիկ, մերձաւոր իմ, ահաւասիկ
կաս գեղեցիկ. աչք քո աղաւնիք։
15 [2]Հարսնն ցփեսայն ասէ," Ահաւասիկ կաս
բարենչան, [11]եղբօրորդեակ իմ, այլ
եւ գեղեցիկ. [12]առ գահոյս" մեր հո-
16 վանաւոր։ Գերանք տանց մերոց մայրք,
դարանաւանդք մեր նոճք։

### ԳԼ. Բ

[2]Փեսայն ցէր անձնն եւ ցհարսնն ասէ,"

1 Ես ծաղիկ [13]դաշտաց, շուշան հովտաց։
2 Իբրեւ շուշան ի մէջ փշոց, այնպէս
մերձաւորդ իմ ի մէջ դստերաց։
3 [2]Հարսնն ցփեսայն ասէ," Իբրեւ խնձորի ի
փայտս անտառի, այնպէս [11]եղբօրորդին
իմ ի մէջ ուստերաց. ընդ հովանեաւ նորա
ցանկացայ նստել՝ եւ նստայ, եւ պտուղ
[4]նորա քաղցր է [14]ի կոկորդի իմում։ Օ-
րիորդացն հարսնն ասէ, Մուծէք" զիս ի

[1]Եբր. Սողոմոնի [2]3Եբր. պակասէ [3]Եբր. է սէր [4]Եբր. անոյշ է, եւղ հեղեալ [5]Եբր. Ձգեա զիս, զհետ քո ընթասցուք [6]Եբր. յիշեսցուք զսէր

[7]Եբր. Գեղեցիկ են այտք քո զարդուք [8]Եբր. Զարդս [9]Եբր. արծաթոյ։ (11) Մինչ արքայ էր ի գահոյս իւր, նարդոս [10]Եբր. սիրելին իմ ինձ, ի գիշերի [11]Եբր. սիրելին [12]Եբր. գահոյք [13]Եբր. Սարոնի եմ, [14]Եբր. ի քիմս իմ։ (4) Եմուծ

տուն գինւոյ, [1]կարգեցէք ի վերայ իմ
5 զսէր. Հաստատեցէք զիս իւղով. կու-
տեցէք յիս խնձոր. զի խանդակաթ" եմ
6 ես սիրով ։ Ձախ նորա ընդ գլխով իմով,
եւ աջ նորա պատեսցէ զինեւ ։
7 [2]Հարսնն ցերուսաղէմի դստերսն ասէ," Երդմնեցուցա-
նեմ զձեզ, դստերք Երուսաղեմի, [3]ի զօ-
րութիւնս եւ յուժգնութիւնս անդաս-
տանի. եթէ յարուցանիցէք՝ զարթուցանիցէք"
զսէրն մինչեւ կամեսցի ։
8 [2]Լուեալ զձայն փեսային եւ ասէ," Ձայն
[4]եղբօրորդւոյ իմոյ. ահաւասիկ սա եկն,
վազելով ի վերայ լերանց՝ խաղալով ի
9 վերայ բլրոց ։ Նման է [5]եղբօրորդին իմ
այծեման կամ որթուց եղանց [2]ի վերայ
լերանց Բեթելայ ։ Հարսնն նշան տայ
երուսաղեմի դստերացն զփեսայէն, եւ ասէ," Ահա-
ւասիկ սա եկաց յայնկոյս որմոյն մերոյ,
կարկառեալ ընդ պատուհանն, հայեցեալ
10 ընդ վանդակապատսն ։ Պատասխանի
տայ [5]եղբօրորդին իմ ինձ՝ եւ ասէ, Արի
եկ, մերձաւոր իմ, գեղեցիկ իմ, [6]աղաւնի
11 իմ". Զի ահա ձմեռն անց, անձրեւք ան-
12 ցին եւ գնացին մեկնեցան. Ծաղիկք
երեւեցան յերկրի մերում, ժամանակ
եհաս յատանելոյ, ձայն տատրակի լսելի
13 եղեւ յերկրի մերում. Թզենի արձակ-
եաց զբողբոջ իւր, որթք մեր ծաղկ-
եալք ետուն զհոտս իւրեանց. արի եկ,
մերձաւոր իմ, գեղեցիկ իմ, [2]աղաւնի
իմ," եւ եկ դու ։
14 Աղաւնեակ իմ ընդ հովանեաւ վիմիդ
առ պատուարաւ պարսպիդ, երեւեցո
ինձ զերեսս քո, եւ լսելի արա ինձ
զբարբառ քո. զի բարբառ քո քաղցր է
եւ տեսիլ քո գեղեցիկ ։
15 [2]Ցեղբարսն փեսայն ասէ զայս ինչ." Կալարուք
մեզ աղուեսուկս փոքունս զապակա-
նիչս այգեաց, զի այգիք մեր ծաղկեալ են ։
16 [2]Հարսնն ասէ զայս ինչ." [5]Եղբօրորդին իմ ինձ
եւ ես նմա, որ հովուէն ի մէջ շուշանաց ։
17 [7]Մինչեւ տիւն լուսաւորեսցէ եւ
ստուերքն շարժեսցին ։ Դարձիր" նմանեաց
դու, [8]եղբօրորդի իմ, այծեման կամ որթուց
եղանց ի վերայ լերանց [9]խնկաբերաց ։

[1] Եբր. դրօշ նորա ի վերայ իմ սէր. (5) Հաստատե-
ցէք զիս շօթիւք, զօրացուցէք զիս խնձորովք. զի
նուաղեալ [2] Յեբր. պակաս [3] Եբր. այծեմամբք
կամ եղամբք անդաստանի, մի՛ յարուցանել եւ մի՛
զարթուցանել [4] Եբր. սիրելւոյ [5] Եբր. սի-
րելին [6] Եբր. և եկ [7] Եբր. Մինչչեւ շնչեալ
տուընջեան, և փախուցեալ ստուերաց, դարձիր
[8] Եբր. սիրելիդ [9] Եբր. Բեթերայ

ԳԼ. Գ

1 Յանկողնի իմում ի գիշերի խնդրեցի
զոր սիրեաց անձն իմ, խնդրեցի զնա՝
եւ ոչ գտի. [2]կոչեցի՝ եւ ոչ ետ ինձ
2 ձայն" Յարեայց եւ շրջեցայց ընդ քա-
ղաքն, ընդ փողոցս եւ ընդ հրապարակս,
եւ խնդրեցից զոր սիրեաց անձն իմ.
խնդրեցի զնա՝ եւ ոչ գտի. [2]կոչեցի զնա՝
3 եւ ոչ ետ ինձ ձայն" Գտին զիս պա-
հապանքն որ շրջէին ընդ քաղաքն ։
[2]Հարսնն ցպահապանսն ասէ," Միթէ զոր
4 սիրեաց անձն իմ տեսէ՞ք ։ Իբրեւ սակա-
ւիկ անցի ըստ նոսա, գտի զոր սիրեաց
անձն իմ ։ [2]Գտեալ զփեսայն ասէ," Կա-
լայ զնա, եւ ոչ թողի զնա, մինչեւ
տարայց զնա ի տուն մօր իմոյ, եւ ի
սենեակ յղացելոյն զիս ։
5 [2]Զերուսաղեմի դստերսն երդմնեցուցանէ երկրորդ անգամ
հարսնն," Երդմնեցուցանեմ զձեզ, դստերք
Երուսաղեմի [10]ի զօրութիւնս եւ ի հաս-
տատութիւնս" ագարակի, եթէ յարուցանիցէք՝
զարթուցանիցէք զսէրն մինչեւ կամեսցի ։
6 [2]Փեսայն վասն հարսինն ասէ," Ո՞վ է
սա որ ելեալ գայ յանապատէ՝ իբրեւ
զծուխ ծառացեալ բարձրացեալ. զմուռս
եւ կնդրուկ յամենայն փոշւոյ իւղագոր-
7 ծաց ։ [2]Օրհներգուն ասացեալ զայս ինչ."
Ահա գահոյք Սողոմոնի. վաթսուն սպա-
ռազէնք շուրջ զնովաւ ի քաջացն Իս-
8 րայելի. Ամենեքեան սուսերաւորք
հմուտք պատերազմի, այր իւրաքանչիւր
9 սուր յազդեր յարհաւիրաց գիշերոյ. Գա-
հաւորակ արար իւր արքայ Սողոմոն ի
10 փայտից Լիբանանու. Զսիւնս նորա գործ-
եաց արծաթիս, զկողս նորա ոսկի, եւ
[11]զձեղուն նորա ծիրանի, [12]զմէջ նորա
ականակապ տարածեալ զսէրն" ի դստե-
11 րացն Երուսաղեմի ։ Ելէք եւ հայեցա-
րուք, դստերք Սիոնի, յարքայ Սողո-
մոն ի պսակն որով պսակեաց զնա մայր
իւր յաւուր փեսայութեան իւրոյ, եւ
յաւուր ուրախութեան սրտի իւրոյ ։

ԳԼ. Դ

[2]Փեսայն ցհարսնն ասէ,"

1 Ահաւասիկ կաս գեղեցիկ, մերձաւոր
իմ, ահաւասիկ կաս գեղեցիկ, աչք քո
աղաւնիք [13]բաց ի լռութենէդ քումմէ".

[10] Եբր. այծեմամբք կամ եղամբք [11] Եբր. զբազմոց
[12] Եբր. մէջ նորա նկարակերպ գործեալ սիրով
[13] Եբր. ընդ քողով քով

վարսք քո իբրեւ զերամակս այծից
2 որք երեւեցան ¹ի Գաղաադէ: Ատա-
մունք քո իբրեւ զերամակս կարճոց
որք ելանեն ի լուալեաց. ամենեքեան
երկուորիք են, եւ անորդի ոչ գոյ ի
3 նոսա: Իբրեւ զթել որդան են շրթունք
քո, եւ խօսք քո գեղեցիկք. իբրեւ
²զկեղեւ նռան են այտք քո՝ ³բաց ի
4 լռութենէդ քումմէ՛՛. Իբրեւ զաշտարակն
Դաւթի պարանոց քո՝ որ շինեալն է ⁴ի
Թալպիոթ. հազար վահան կախեալ են
զնմանէ, ⁵եւ ամենայն նետք սպառա-
5 զինաց՛՛: Երկու ստինք քո իբրեւ զեր-
կուս ուլս երկուորիս այծեման, որք
6 արածին ի մէջ շուշանաց, ⁶Մինչեւ տիւն
նուաղեսցէ, եւ ստուերքն շարժեսցին՛՛,
գնացից ես ինձէն ի լեառն զմռսենեաց
7 եւ ի բլուրն կնդրկի: Ամենեւին գե-
ղեցիկ ես, մերձաւոր իմ, եւ արատ
ինչ ոչ գոյ ի քեզ:
8 Եկ ի Լիբանանէ, հարսն, եկ այսր ի
Լիբանանէ. եկեսցես ⁷եւ անցցես ի
գլխոյ հաւատոյ՛՛ ի կատարէ Սանիրայ
եւ Հերմոնի, ի մորեաց առիւծուց, եւ
9 ի լերանց ընծուց: Սրտաեալ արարեր
զմեզ, քոյր մեր հարսն, սրտաեալ ա-
րարեր զմեզ միով ակամբ քով, եւ միով
10 քառամանեակաւ պարանոցի քո: ⁸Քանի՜
զի գեղեցկացան ստինք քո, քոյր իմ
հարսն, քանզի գեղեցկացան ստինք քո
ի գինւոյ՛՛, եւ հոտ հանդերձից քոց քան
11 զամենայն խունկս: Մեղր կաթեցու-
ցանեն շրթունք քո, ⁹քոյր իմ՛՛ հարսն,
մեղր եւ կաթն ի ներքոյ լեզուի քո,
եւ հոտ հանդերձից քոց իբրեւ զհոտ
12 ¹⁰կնդրկի: Պարտէզ փակեալ, քոյր իմ
հարսն, ¹¹պարտէզ փակեալ եւ աղբեւր
13 կնքեալ: ¹²Պտղաբերութիւն քո
դրախտ նռնենեաց՝ հանդերձ պտղովք
¹³մրգաբերաց. ¹⁴կիպրոս հանդերձ նար-
14 դոսիւ. Նարդոս եւ քրքում, խունկե-
ղէգն եւ կինամոմոն, հանդերձ ամե-
նայն ծառօք ¹⁵Լիբանանու. զմուռս եւ

¹Եբր. ի լեռնէն Գաղաադու ²Եբր. զկտոր ³Եբր. ընդ քօղով քով ⁴Աւելորդ՝ ի գինանոց ⁵Եբր. ամենեքին սպարք զօրաւորաց ⁶Եբր. Մինչեւ շնչեալ տուընջեան, եւ փախուցեալ ստուերաց ⁷Եբր. Հայեսցես ի կատարէ Ամանայ, ⁸Եբր. Քանի՜ գեղեցիկ է սէր քո, քոյր իմ հարսն, քանի՜ քաղցր է սէր քո քան զգինի ⁹Յեբր. պակասէ ¹⁰Եբր. Լիբանանու ¹¹Կամ. աղբեւր ¹²Եբր. Սանդղունք ¹³Եբր. քաղցրութեան ¹⁴Կամ. նաճ ¹⁵Եբր. կնդրկի

հալուէ, հանդերձ ամենայն գլխաւոր
15 խնկօք: Աղբեւր բուրաստանաց եւ ակն
ջրոյ կենդանւոյ՝ բղխեալ ի Լիբանանէ:
16 Արի, հիւսիսի, եւ եկ, հարաւ, շնչեա
ի պարտէզ իմ, եւ բուրեսցին խունկք
¹⁶իմ: ⁹Հարսնն աղաչէ զի իջցէ փեսայն խօսք՛՛
Իջցէ ¹⁷եղբօրորդի իմ ի պարտէզ իւր,
եւ կերիցէ զպտուղս ¹⁸ծառոց իւրոց՛՛:

ԳԼ. Ե

⁹Փեսայն ցհարսնն ասէ՛՛

1 Մտի ի պարտէզ իմ, քոյր իմ հարսն,
կթեցի զմուռս իմ հանդերձ խնկովք ի-
մովք. կերայ ¹⁹զհաց իմ մեղու իմով,
արբի զգինի իմ կաթամբ իմով: Կերայք,
մերձաւորք իմ, եւ արբէք, եւ արբե-
ցարուք, ²⁰եղբօրորդիք իմ՛՛:
2 Ես ննջեմ, եւ սիրտ իմ արթուն կայ:
⁹Հարսնն զձայն զփեսայէն բախել զդրանն.՛՛
Ձայն ²¹եղբօրորդւոյ իմոյ բախէ ի դրանն:
⁹Փեսայն ասէ.՛՛ Բաց ինձ, քոյր իմ, մեր-
ձաւոր իմ, աղաւնի իմ, կատարեալ իմ.
զի գլուխ իմ լցաւ ցօղով, եւ վարսք
3 իմ ի շաղից գիշերոյ: ⁹Հարսնն ասէ զայ-
սինչ՛՛ Մերկացայ զպատմուճան իմ, զիա՞րդ
ագանիցիմ զնա. լուացի զոտս իմ, զիա՞րդ
աղտեղացուցից զնոսա:
4 ¹⁷Եղբօրորդին իմ ձգեաց զձեռն իւր
ընդ պատուհանն, եւ որովայն իմ խռո-
5 վեցաւ ի նա: Յարեայ ես ի բանալ ²¹եղ-
բօրորդւոյ իմոյ. ձեռք իմ կաթեցուցին
զմուռս, եւ մատունք իմ զմուռս լցեալս
6 ի վերայ ձեռաց փականացն: Բացի ես
²¹եղբօրորդւոյ իմոյ. ¹⁷եղբօրորդին իմ ²²անց,
եւ ոգի իմ ել ընդ բանի նորա: Խնդրեցի
զնա՝ եւ ոչ գտի, կոչեցի զնա՝ եւ ոչ
7 ետ ինձ ձայն: Գտին զիս պահապանքն
որ շրջէին ի քաղաքին, հարին եւ վի-
րաւորեցին զիս. հանին յինէն զքօղայն իմ
8 պահապանք պարսպացն: Երդմնեցու-
ցանեմ զձեզ, դստերք Երուսաղեմի, ⁹ի
զօրութիւնս եւ ի հաստատութիւնս ա-
գարակի,՛՛ եթէ գտանիցէք ²³զեղբօրոր-
դին իմ՝ պատմեսջիք նմա, եթէ խան-
դակաթ եմ ես ի սէր քո:
9 ⁹Դստերքն Երուսաղէմի եւ պահապանք պարս-
պացն հարցանէին ցհարսնն,՛՛ Զի՞նչ ²⁴է եղբօր-
որդին քո յեղբօրորդւոյ՛՛, գեղեցիկդ ի

¹⁶Եբր. Նորա ¹⁷Եբր. սիրելին ¹⁸Եբր. Նորա քաղցունս ¹⁹Եբր. զխորխս ²⁰Եբր. սիրելիք ²¹Եբր. սիրելւոյ ²²Եբր. մեկնեցաւ, անց ²³Եբր. զսիրելին ²⁴Եբր. առաւելութիւն սիրելւոյ քո քան զսիրելւոյ

կանայս, զի՞նչ [1]է եղբօրորդին քո յեղ-
բօրորդւոյ", զի այդպէս երդմնեցուցեր
զմեզ ։
10 [2]Հարսնն նշան տայ գեղեցկութեանն զինչ էրն." [3]Եղբօրորդին իմ սպիտակ
է եւ կարմիր՝ ընտրեալ ի բիւրուց ։
11 Գլուխ նորա յոսկւոյ [4]կեփազեայ,
վարսք նորա [5]կասծոյք սեաւ իբրեւ զագ-
12 ռաւ . Աչք նորա իբրեւ զաղաւնիս ի վե-
րայ [6]լիութեան ջրոց, լուացեալ կա-
թամբ, նստեալ ի վերայ ջրոց լրութեան".
13 Ծնօտք նորա իբրեւ զտաշտս խնկոց բու-
րեն զանուշահոտութիւն իւղագործաց.
շրթունք նորա շուշանք՝ բղխեն զմուռս
14 լիութեան. Ձեռք նորա [7]ոսկիք ճախա-
րակեալք" լցեալ ակամբք Թարսեայ. ո-
րովայն նորա տախտակ փղոսկրեայ ա-
15 կանակապ յականց շափիղայ. Սրունք
նորա սիւնք մարմարեայք հաստատեալք
ի վերայ ոսկի խարսխաց. տեսիլ նո-
րա որպէս զընտիր եղեւնափայտից Լի-
16 բանանու ։ [8]Կոկորդ նորա լի քաղցրու-
թեամբ, եւ ամենեւին ցանկալի ։ Այն
է [3]եղբօրորդին իմ, եւ այն է մերձա-
ւոր իմ, դստերք Երուսաղեմի ։
17 [2]Հարցանէն դստերքն Երուսաղէմի՝ ո՛ւր անց գեղեցկութիւն նորա . այսինքն է՝ հարսինն."
Յո՞ գնաց [3]եղբօրորդին քո, գեղեցիկդ
ի կանայս, յո՞ր կողմն դիտեաց [3]եղ-
բօրորդին քո, եւ խնդրեսցուք եւ մեք
զնա ընդ քեզ ։

## ԳԼ. Զ

[2]Պատասխանէ տայ հարսնն եւ ասէ,"

1 [3]Եղբօրորդին իմ էջ ի պարտէզ իւր ի
տաշտս խնկոց, հովուել ի բուրաստանս
2 եւ ժողովել շուշանս ։ Ես [9]եղբօրորդւոյ
իմոյ եւ [3]եղբօրորդին իմ ինձ, որ հո-
վուէն ի մէջ շուշանաց ։
3 [2]Փեսայն ցհարսնն ասէ," Բարեխնամն ես,
մերձաւոր իմ, իբրեւ [10]զհաճութիւն, գե-
ղեցիկ իբրեւ զԵրուսաղէմ, [11]զարմանալի
4 յօրինեալ"։ Դարձո զաչս քո յինէն, վասն
զի դոքա սրարբեցուցին զիս. վարսք քո
իբրեւ զերամակս այծից որք երեւեցան
5 ի Գաղաադէ։ Ատամունք քո իբրեւ զերա-
մակս կտրելոց որք ելանեն ի լուալեաց.
ամենեքին երկուորիք են, եւ անծնունդ
6 ոչ գոյ ի նոսա ։ [2]Իբրեւ զթել կարմիր
շրթունք քո, եւ խօսք քո՝ գեղեցիկք."
իբրեւ [12]զկեղեւ նռան այտք քո՝ [13]բաց ի
լռութենէդ քումմէ"։
7 Վաթսուն են թագուհիք եւ ութսուն
հարճք, եւ օրիորդք որոց ոչ գոյ թիւ ։
8 Մի է աղաւնի իմ, կատարեալ իմ. մի
է մօր իւրոյ, ընտրեալ ծնողի իւրոյ.
տեսին զնա դստերք եւ երանեցին նմա,
թագուհիքն եւ հարճք գովեցին զնա ։
9 [2]Դստերքն եւ թագուհիք տեսին զհարսնն,
եւ երանեցին նմա." Ո՞վ է սա որ ե-
րեւեալ է իբրեւ զառաւօտ, գեղեցիկ
իբրեւ զլուսին, ընտիր իբրեւ զարե-
գակն, [11]զարմանալի յօրինեալ"։
10 [2]Փեսայն ցհարսնն ասէ," Ի պարտէզ ըն-
կուզեացն իջի հայել յարդիւնս վտակացն,
տեսանել թէ ծաղկեա՞լ իցէ որթ, [2]թէ
ծաղկեա՞լ իցէ նռճ," թէ ծաղկեա՞լ իցեն
11 նռնենիք ։ [2]Հարսնն ցփեսայն ասէ, Անդ
տաց զստինս իմ քեզ," ոչ ծանեաւ անձն
իմ. եդ զիս իբրեւ զկառս Ամինադաբայ ։
12 [2]Դստերքն եւ թագուհիք ցհարսնն ասեն,"
Դարձիր,[14] Սոմնացիդ, դարձիր, դար-
ձիր եւ տեսցուք մեք ի քեզ ։
[2]Ցդստերսն եւ ցթագուհիսն փեսայն շրջեալ ասէ," Զի՞նչ տեսանէք ի Սոմնացիդ՝
որ գիմեալ գայ իբրեւ զգունդս բանակաց ։

## ԳԼ. Է

1 [15]Քանզի գեղեցկացան գնացք քո կօշ-
կօք, դուստր [16]Նադաբայ. ձեւ բարձից
քոց նման է ուլանց յեսելոց գործոյ
2 ճարտարի ։ Պորտ քո թակոյկ ճախա-
րակեալ՝ անպակաս ի գինւոյ խառնե-
լոյ. որովայն քո՝ իբրեւ զշեղջ ցորենոյ
3 փակեալ շուշանաւ. Երկու ստինք քո՝
իբրեւ երկուս ուլս երկուորիս այծեման.
4 Պարանոց քո՝ իբրեւ աշտարակ փղոսկ-
րեայ. աչք քո՝ իբրեւ զծովակն Եսե-
բոնի ի դրունս [17]դստերաց բազմաց".
ռնգունք քո իբրեւ զաշտարակն Լի-
բանանու, որ դիտէ հանդէպ Դամաս-
5 կոսի ։ Գլուխ քո ի վերայ քո իբրեւ
զԿարմեղոս. հիւսք գլխոյ քո իբրեւ զծի-

---

[1] Եբր. առաւելութիւն սիրելւոյ քո քան զսիրելւոյ
[2] Յեբր. դոխաէ  [3] Եբր. սիրելին  [4] Եբր. սրբոյ
[5] Եբր. ցիր եւ ցան  [6] Եբր. հոսանաց ջրոց. լուացեալ կաթամբ, ընդելուզեալ վայելչութեամբ
[7] Եբր. օղք ոսկւոյ  [8] Եբր. Քիմք  [9] Եբր. սիրելւոյ
[10] Եբր. զԹիրսա  [11] Եբր. ահեղ իբրեւ զգունդ դրօշակրաց

[12] Եբր. զկոտոր  [13] Եբր. ընդ քողով քով  [14] Եբրայեցին յաւելու, դարձիր,  [15] Եբր. Քանի՞
[16] Այսինքն՝ իշխանի  [17] Եբր. Բաթրաբբիմայ

բանի, [1]իբրեւ զթագաւոր՝ թագ ի գլուխ
6 յառապարէսս": Քանի՜ գեղեցկացար եւ
քանի՜ քաղցրացար, սէր ի փափկութեան
7 քում: Նմանեցաւ [2]մեծութիւն քո ար-
մաւենւոյ, եւ ստինք քո ողկուզաց:
8 Ասացի՝ թէ Ելից յարմաւենին, բուռն
հարից [3]զբարձրութեանց նորա. եւ ե-
ղիցին ստինք քո իբրեւ զողկոյզս որթոյ,
եւ հոտ ռնգաց քոց իբրեւ զխնձոր:
9 [4]Կոկորդ քո իբրեւ զգինի ազնիւ, [5]Հարսնն
է դէմս դստերացն եւ Բաթռաբեմեացն ասէ,"
Երթեալ ընդ [6]եղբօրորդւոյ իմոյ յուղ-
ղութիւնս, [7]բաւական շրթամբք ի-
մովք եւ ատամամբք":
10 Ես [6]եղբօրորդւոյ իմոյ, եւ առ իս [8]դարձ
11 նորա: Եկ, [9]եղբօրորդի իմ, ելցուք յագա-
րակս, ագցուք ի չէնս [5]եւ ի պարտէզս",
12 կանխեսցուք յայգիս: Տեսցուք թէ ծաղ-
կեա՞լ իցէ որթ, թէ ծաղկեա՞լ իցէ նուռն, թէ
ծաղկեա՞լ իցէ նռնենի, անդ տաց [10]զստինս
13 իմ քեզ: Մանրագորք ետուն զհոտ իւ-
րեանց, եւ առ դուրս մեր ամենայն մրգա-
բերք, զնոր առ հնով, զոր [5]ես ինձ մայր
իմ" պահեցի քեզ, [9]եղբօրորդի իմ:

ԳԼ. Ը

1 Ո՞վ տայր քեզ, [11]եղբօրորդի իմ," դիել
զստինս մօր իմոյ. գտեալ զքեզ ար-
տաքոյ՝ համբուրեցից զքեզ, եւ ոչ ան-
2 գոսնեսցեն զիս: Առեալածից զքեզ ի
տուն մօր իմոյ, [12]եւ ի սենեակ յղացե-
լոյն" զիս. արբուցից քեզ ի գինւոյ խու-
ղակործաց, յօշարակէ նռնենեաց իմոց:
3 Ձախ նորա ընդ գլխով իմով, եւ աջ
նորա պատեսցէ զինեւ:
4 Երդմնեցուցից զձեզ, դստերք Երուսա-
ղեմի, [13]ի զօրութիւնս եւ ի հաստատու-
թիւնս ագարակի, եթէ յարիցէք զար-
թուսջիք" զսէրն մինչեւ կամեսցի:
5 [5]Դստերքն եւ Բաթռաբեմեքն ասեն," Ո՞վ է
սա որ ելեալ գայ [14]սպիտակացեալ, յենու-
գայ յեղբօրորդի" իւր: [5]Փեսայն ցհարսնն ասէ,"
Ի ներքոյ խնձորւոյն զարթուցի զքեզ.
անդ երկնեաց զքեզ մայր քո, անդ երկ-
նեաց որ ծնաւն զքեզ:
6 Դիր զիս իբրեւ զկնիք ի սրտի քում,
եւ իբրեւ [15]զմատանի ի վերայ բազկի
քո, զի ըռւռն է իբրեւ զմահ սէր,
եւ խիստ՝ իբրեւ զդժոխս նախանձ.
թռիչք նորա իբրեւ զթռիչս բոցոյ հրոյ:
7 Ջուրք բազումք ոչ կարասցեն զսէր
շիջուցանել, եւ գետք ոչ արգելցեն զնա.
եթէ տացէ այր զամենայն զկեանս իւր
ընդ սիրոյ, անգոսնելով անգոսնեսցեն զնա:
8 Քոյր մեր փոքրիկ եւ ստինք ոչ գոյ նորա.
զի՞նչ արասցուք քեռ մերում յաւուր
9 յորում [16]պատմեսցի նմա": Եթէ պարիսպ
իցէ՝ շինեսցուք ի վերայ նորա մահարձանս
արծաթիս, եթէ դուռն իցէ՝ յօրինեսցուք
ի նմա տախտակս եղեւնափայտեայս:
10 [5]Հարսնն Սոմորյանէ եւ ասէ," Ես եմ պա-
րիսպ եւ ստինք իմ իբրեւ զաշտարակս,
ես էի յաչս նորա՝ որպէս որ գտանիցէ
զխաղաղութիւն:
11 Այգի եղեւ Սողոմոնի ի Բեէղամովն.
ետ զայգին իւր ցպահապանսն. բերցէ
այր իւրաքանչիւր ընդ պտղոյ նորա հա-
զարս արծաթոյ:
12 Այգի իմ ինձ առաջի իմ. [17]հազարքն
Սողոմոնի", եւ երկերիւրք պահապանաց
որ պահեն զպտուղ նորա:
13 [6]Հարսնն ասէ," Որ նստիս ի պարտէզս՝
[18]այլք անսան քեզ. լսելի արա ինձ
զբարբառ քո:
14 Փախիր, [9]եղբօրորդի իմ, եւ նմանեաց
այծեման, կամ որթուց եղանց ի վերայ
լերանց խնկաբերաց:

[19]Օրհնութիւնք եւ թագուհիքն ասեն,

1 Գիտացի զի մարմին զբօսայուցանէ
զմանկութիւն, բարձրացուսցէ ի չառ-
մարանս իւր. թագաւոր մեր ի գահոյս
մեր. իբրեւ արմաւ ոսկեղէն զմասանց
2 լցցին տաշտք մեր: Դարձցի թագաւորն
3 անցրէն ի մանկութիւն: Սիրելին ի սե-
4 նեակս մեր. երգեսցուք զսէրն: Փեսայն
ասէ, Ես իսկ եմ ի սաղմոսարանին. երգե-
ցից ընդ ընկերս իմ. երգեսցուք եւ ուրախ
5 լիցուք: Հարսնն եւ դստերքն եւ օրիորդքն
ասեն, Թագաւոր սիրելի, թէպէտ եւ ծած-
կեցաք ի տեսլենէ, աչք մեր յանուորք:
6 Տէր արար զքեզ, հաստատեաց զքեզ,
պատրաստեաց զքեզ յարգանդէ, փեղե-
ցիկդ ի կանայս. մայր քո ծնցի մարմին
անախտ: Առնոյն՝ յայլմէ տեսչութենէ,
զի այսպէս ունէր:"

[1] Եբր. թագաւոր հարեալ ի գիսակս [2] Եբր. հասակ [3] Եբր. զոստոց [4] Եբր. Քիմք [5] Յեբր. պակասէ [6] Եբր. սիրելւոյ [7] Եբր. որ տայն խօսել շրթանց որոց ննջեն [8] Եբր. ցանկութիւն [9] Եբր. սիրելի [10] Եբր. զսէր [11] Եբր. իբրեւ զեղբայր [12] Եբր. ուսուցանէր, կամ, ուսուցանէիր [13] Եբր. մի՛ յարուցանել եւ մի՛ զարթուցանել [14] Եբր. յանապատէ յեցեալ ի սիրելին

[15] Եբր. զկնիք [16] Եբր. խօսեսցի զնմանէ [17] Եբր. հազարք, քեզ, Սողոմոն [18] Եբր. ընկերք [19] Յեբրայականն պակասեն այս համարք:

# ԳԼՈՒԽՔ ԳՐՈՑ ԵՍԱՅԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ԵՍԱՅԵԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 ՏԵՍԻԼ Եսայեայ որդւոյ Ամովսայ,
զոր եաես ի վերայ Հրէաստանի եւ
ի վերայ Երուսաղեմի՝ ի թագաւորու-
թեանն Ոզիայ եւ Յովաթամայ եւ Ա-
քազու եւ Եզեկիայ, որ թագաւորեցին
Հրէաստանի։
2 Լուր, երկին, եւ ունկն դիր, երկիր, զի
Տէր խօսեցաւ. Որդիս [1]ծնայ եւ բարձ-
րացուցի, եւ նոքա զիս անարգեցին։
3 Ծանեաւ եզն զստացիչ իւր, եւ էշ
զմսուր տեառն իւրոյ. եւ Իսրայէլ զիս
ոչ ծանեաւ, եւ ժողովուրդ իմ զիս ի
միտ ոչ առ։
4 Վա՜յ ազգին մեղաւորի. ժողովուրդ
որ լի է մեղօք, սերմն ժանտ, որդիք
անօրէնք. թողին զՏէր եւ բարկացու-
ցին զՍուրբն Իսրայէլի. օտարացան եւ
5 յետս կացին։ [2]Զի՞ եւս յաւելուք վէրս
յանօրէնութիւնս"։ Ամենայն գլուխ ի
ցաւս, եւ ամենայն սիրտ ի տրտմու-
6 թիւն։ Յոտից մինչեւ ցգլուխ չիք ի նմա
առողջութիւն. [3]ոչ վէրք, [3]ոչ այտուցք,
[4]ոչ հարուածք խլխլյաթեալք, չիք սպե-
ղանի ի վերայ դնել, ոչ ձէթ եւ ոչ պա-
7 տանս։ Երկիր ձեր աւերակ, քաղաքք
ձեր հրձիգք. զաշխարհն ձեր առաջի ձեր
օտարք [4]կերիցեն, աւերեալ եւ կործան-
8 եալ յազգաց օտարաց։ Լքեալ [5]թողցի
դուստր Սիոնի իբրեւ զտաղաւար յայգ-
ւոջ, եւ իբրեւ զհովանի մրգապահաց ի
մէջ սեխենեաց, եւ իբրեւ զքաղաք պա-
9 շարեալ։ Եւ եթէ ոչ Տեառն զօրու-
թեանց թողեալ էր մեզ զաւակ՝ իբրեւ
զՍոդոմ լինէաք, եւ Գոմորայ նմանէաք։
10 Լուարուք զբան Տեառն, իշխանք Սո-
դոմացւոց, ունկն դիք օրինաց Աստու-
11 ծոյ, ժողովուրդք Գոմորացւոց։ Զի՞ կայ
իմ եւ յաճախելոյ զոհիցդ ձերոց, ասէ
Տէր. յագեալ եմ ողջակիզօք խոյոց ձե-
րոց, եւ զճարպս գառանց եւ զարիւն
12 ցլուց եւ նոխազաց ոչ կամիմ. [6]Եւ ոչ
թէ" գայցէք յանդիման լինել ինձ, ո՞վ
իսկ խնդրեաց զայդ ի ձեռաց ձերոց,
13 կոխել զգաւիթս իմ։ Մի՛ [7]յաճախէք.
եթէ մատուցանիցէք ինձ նաշիհ՝ զուր
է, եւ" խունկք ձեր պիղծ են ինձ.
զգլուխս ամսոց ձերոց եւ զշաբաթս եւ
զօրն մեծ ոչ առնում յանձն. [8]զպահս
14 եւ զպատարկութիւնս եւ" Զամսագլուխս
ձեր եւ զտօնս ձեր ատեաց անձն իմ.
[9]յագեալ եմ ձեւք, ոչ եւս ներեցից
15 մեղաց ձերոց"։ Յորժամ համբառնայցէք
զձեռս ձեր՝ դարձուցից զերեսս իմ ի
ձէնջ, եւ եթէ յաճախիցէք յաղօթս՝ ոչ
լուայց ձեզ. զի ձեռք ձեր լի են արեամբ։
16 Լուացարուք, սրբեցարուք, ընկեցէք
զչարիս ձեր յանձանց ձերոց առաջի ա-
չաց իմոց. դադարեցէք ի չարեաց ձե-
17 րոց. Ուսարուք զբարիս գործել. խնդրե-
ցէք զիրաւունս, փրկեցէք զզրկեալն,
դատ արարէք որբոյն, եւ տուք իրա-
ւունս այրւոյն։
18 Եւ եկայք խօսեսցուք ընդ միմեանս,
ասէ Տէր. եւ եթէ իցեն մեղք ձեր իբ-
րեւ [10]զձանձախարիթ՝ իբրեւ զձիւն սպի-
տակ արարից. եւ եթէ իցեն իբրեւ զոր-
դան կարմիր՝ իբրեւ զասր սուրբ արա-
19 րից։ Եւ եթէ ախորժեսջիք եւ լուիջիք
20 ինձ՝ զբարութիւնս երկրի կերիջիք. Ա-
պա թէ [11]ոչ կամիցիք լսել ինձ", սուր
կերիցէ զձեզ. քանզի բերան Տեառն խօ-
սեցաւ զայս։
21 Զիա՞րդ եղեւ պոռնիկ՝ քաղաքն հա-
ւատարիմ [3]Սիոն, լի հաւատովք՝ յո-

[1] Եբր. սնուցի [2] Եբր. Ընդէ՞ր հարկանիջիք այլ եւս որ յաւելուք դ յապստամբութիւնն [3] Եբր. գլխոյ [4] Եբր. ուտեն [5] Եբր. թողեալ է

[6] Եբր. Յորժամ [7] Եբր. յաճախէք մատուցանել ընծայս ունայնութեան. [8] Եբր. անօրէնութիւն է և տօնն. [9] Եբր. եղեն ինձ բեռն, վաստակեալ եմ ի կրելոյ [10] Եբր. զկրկին կարմիր [11] Եբր. հեստիցէք եւ ապստամբ լինիջիք

րում արդարութիւն հանգուցեալ էր , եւ
22 արդ սպանօղք են ։ Արծաթ [1]ձեր անփորձ , վաճառականք ձեր խառնեն ջուր
23 ընդ գինի ․ Իշխանք ձեր՝՝ ապստամբք՝ պղակիցք են գողոց , սիրեն զկաշառս , [2]վրիժագործք ․ որբոց իրաւունս ոչ առնեն , եւ դատաստանի այրեաց ունկն ոչ դնեն ։
24 Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր , Տէր զօրութեանց, Հզօրն Իսրայէլի. [3]Վա՜յ ձեզ, հզօրքդ Իսրայէլի, զի ոչ եւս դադարեսցէ բարկութիւն իմ ի հակառակորդաց իմոց , եւ դատաստանօք՝ դատեցայց
25 զթշնամիս իմ՝՝ ։ Եւ արկից զձեռն իմ ի վերայ քո ․ եւ [4]ածից քեզ՝՝ հասանգն ի սրբութիւն ապստամբացդ , եւ զապըստամբսդ կորուսից՝՝ ․ եւ բարձից ի քէն զամենայն [5]անօրէնս , եւ զամենայն ամ-
26 բարտաւանս խոնարհեցուցից՝՝ ։ Եւ կացուցից ի վերայ քո դատաւորս իբրեւ զառաջինն , եւ զխորհրդականս քո որպէս ի սկզբանէն ․ եւ ապա կոչեսջիր դու քաղաք արդարութեան՝ [6]մայր քա-
27 ղաքաց հաւատարիմ Սիոն ։ Զի իրաւամբք եւ արդարութեամբ փրկեսցի գերութիւն
28 նորա եւ ողորմութեամբ՝՝ ։ Եւ խորտակեսցին անօրէնք եւ մեղաւորք ի միասին ․ եւ որք թողին զՏէր՝ [7]վախճանեսցին ի միասին ։ Քանզի արդ ամաչեսցեն
29 ի կուռս իւրեանց ընդ որս նոքեանք հաճեալ էին , եւ զգեցցին զամօթ ի գրոշեալս իւրեանց զորս նոքեանքն արարին , եւ ամաչեսցեն ի պարտէզս իւ-
30 րեանց որոց ցանկացան ։ Զի եղիցին՝՝ իբրեւ զբեւեկնի տերեւաթափ , եւ իբ-
31 րեւ զդրախտ որոյ ոչ գուցէ ջուր ։ Եւ եղիցի [8]զօրութիւն նոցա՝՝ իբրեւ զծեծած վչոյ, եւ գործք [9]նոցա իբրեւ զկայծակունս հրոյ ․ եւ այրեսցին [10]անօրէնք եւ մեղաւորք՝՝ ի միասին , եւ ոչ ոք իցէ որ շիջուսցանիցէ ։

[1]Եբր․ քո եղեւ ի կղկղանս , գինի քո խառնեալ է ջրով․ (23) Իշխանք քո [2]Եբր․ զհետ երթան վարձուց [3]Եբր․ Վա՜յ, խնդրեցից քէն ի հակառակորդաց իմոց, և առից վրէժ ի թշնամեաց իմոց [4]Եբր․ զտեցից իբրեւ ամճառաւ զկղկղանս քո [5]Եբր․ անագ քո [6]Եբր․ աւան հաւատարիմ․ (27) Սիոն իրաւամբք փրկեսցի, եւ դարձեալք նորա արդարութեամբ ․ [7]Եբր․ սպառեսցին ․ (29) Քանզի յամօթ լիցին ընդ բեւեկնիս որոց ցանկացայք, եւ ամաչեսջիք ընդ պարտէզս զորս ընտրեցէք ․ (30) Զի եղիջիք [8]Եբր․ զօրաւորն [9]Եբր․ Նորա [10]Եբր․ երկոքեան

Գլ․ Բ

1 Բանն որ եղեւ առ Եսայի որդի Ամովսայ ի վերայ Հրէաստանի եւ ի վերայ Երուսաղեմի ։
2 Եւ եղիցի յաւուրս յետինս [11]յայտնի լեառն Տեառն , եւ տուն Աստուծոյ՝՝ ի վերայ գլխոց լերանց , եւ բարձրասցի ի վերայ բլրոց , եւ [12]եկեսցեն ի նա ամե-
3 նայն հեթանոսք ։ Եւ երթիցեն ժողովուրդք բազումք , եւ ասասցեն , Եկայք եւ ելցուք ի լեառն Տեառն , ի տուն Աստուծոյ Յակոբայ , եւ պատմեսցէ մեզ զճանապարհս իւր , եւ գնասցուք ընդ [13]նա ․ զի ի Սիոնէ ելցեն օրէնք , եւ բան
4 Տեառն յԵրուսաղեմէ ․ Եւ դատեսցի ի մէջ հեթանոսաց , եւ յանդիմանեսցէ զժողովուրդս բազումս ․ եւ ձուլեսցեն զսուսերս իւրեանց ի խոփս , եւ զտէգս իւրեանց ի մանգաղս ․ ոչ առնուցու ազգ յազգի վերայ սուր , եւ ոչ եւս ուսանիցին տալ պատերազմ ։
5 Եւ արդ , դու տուն Յակոբու , եկայք
6 երթիցուք ի լոյս Տեառն ․ [14]Քանզի եթող նա զժողովուրդ իւր զտունն Յակոբայ ․ զի լցաւ իբրեւ զառաջինն աշխարհ նոցա հմայիւք իբրեւ զայլազգեաց , եւ որդիք բազումք այլազգիք ծնան նոցա՝՝
7 Լցաւ աշխարհ նոցա ոսկւով եւ արծաթով , եւ ոչ էր թիւ գանձուց նոցա ․ լցաւ երկիր նոցա երիվարօք , եւ ոչ էր
8 թիւ կառաց նոցա ։ Լցաւ երկիր նոցա պարշելեօք , գործոց ձեռաց իւրեանց երկիր պագին որոց արարին մատունք
9 նոցա ։ Խոնարհեցաւ մարդ , եւ յերկիր կործանեցաւ այր ․ եւ ոչ [15]ներեցից նո-
10 ցա ։ Եւ արդ երթայք մտէք ընդ վիմօք , եւ թաքերուք յերկրի յերեսաց ահի Տեառն , եւ ի փառաց զօրութեան [16]նորա ․ յորժամ յարիցէ վանել զերկիր ։
11 Զի աչք Տեառն բարձունք են , եւ մարդ տառապեալ՝՝ ․ եւ խոնարհեսցի բարձրութիւն մարդկան , եւ բարձրասցի Տէր
12 միայն յաւուր յայնմիկ ։ Զի օր Տեառն զօրութեանց ի վերայ ամենայն հպարտից եւ ամբարտաւանից , եւ ի վերայ

[11]Եբր․ հաստատեալ եղիցի լեառն տան Տեառն [12]Եբր․ դիմեսցեն իբրեւ զհեղեղ [13]Եբր․ շաւիղս նորա [14]Եբր․ Քանզի թողեր զժողովուրդ քո, զտունն Յակոբայ․ զի լցան [illegible] արեւելից, և հմայեն իբրեւ զՓղշտացիս, և յորդիս օտարաց եռուն ձեռս ․ [15]Եբր․ ներեսցես [16]Եբր․ Նորա ․ (11) Աչք ամբարտաւանութեան մարդոյ կորացին

ամենայն բարձրացելոց [1]եւ վերացելոց",
13 եւ խոնարհեսցին. Եւ ի վերայ ամենայն
մայրից Լիբանանու բարձրացելոց եւ վե-
րացելոց, եւ ի վերայ ամենայն ծառոց
14 կաղնեաց Բասանու, Եւ ի վերայ ամե-
նայն լերանց բարձանց, եւ ի վերայ ամե-
15 նայն բլրոց բարձրացելոց, Եւ ի վերայ
ամենայն աշտարակաց բարձրացելոց,
եւ ի վերայ ամենայն պարսպաց [2]բարձ-
16 րացելոց, Եւ ի վերայ ամենայն նաւուց
[3]ծովու, եւ ի վերայ ամենայն հանդիսի
17 գեղեցկութեան նաւուց։ Եւ խոնարհեսցի
[4]ամենայն մարդ", եւ անկցի հպարտու-
թիւն մարդկան, եւ բարձրասցի Տէր միայն
18 յաւուր յայնմիկ։ [5]Եւ զձեռագործս իւրեանց
19 զամենայն թաքուսցեն" յայրս եւ
ի ծերպս վիմաց եւ ի սորս երկրի, յերեսաց
ահի Տեառն եւ ի փառաց զօրութեան
նորա, յորժամ յարիցէ վանել զերկիր։
20 [6]Զի յաւուր յայնմիկ հանցէ" մարդ
զպարշելիս իւր զարծաթեղէնս եւ զոս-
կեղէնս՝ զոր արարին երկիր պագանել՝
21 [7]ունայնեաց եւ չղջիկանց, Մտանել
ի ծակս [8]վիմի հաստատնոյ" եւ ի
ծերպս վիմաց, յերեսաց ահի Տեառն եւ
ի փառաց զօրութեան նորա, յորժամ
22 յարիցէ վանել զերկիր։ [9]Լքել ձեզ" ի
մարդոյն յորում զոյ շունչ յնչունս նո-
րա. զի ընդ [10]ո՞ւմ ումեք" համարեսցի նա։

ԳԼ. Գ

1 [11]Ահաւասիկ Տէր, Տէր զօրութեանց
բարձցէ ի Հրէաստանէ եւ յԵրուսաղեմէ
[12]զայր հզօր եւ զկին զօրաւոր", զզօրու-
2 թիւն հացի եւ զզօրութիւն ջրոյ, Զհսկայն
եւ [1]զզօրաւորն եւ" զայր պատերազմօղ,
եւ զդատաւոր եւ զմարգարէ եւ [13]զքննիչ
3 եւ զծեր, Եւ զյիսնապետ, եւ [14]զսքանչելին
խորհրդական", եւ զիմաստուն ճարտարա-
4 պետ, եւ զհանճարեղն [15]զունկնդիր։ Եւ
կացուցից ի վերայ նոցա մանկունս իշ-
խանս, եւ [16]խաղեբայք տիրեսցեն նոցա։
5 Եւ անկցի ժողովուրդն՝ այր ընդ այր, եւ այր
ընդ ընկերի իւրում, ընդհարցի մանուկն
ընդ ծերոյն եւ անարգն ընդ պատուակա-
6 նոյն։ Զի բուռն հարկանիցէ այր զեղբօրէ
իւրմէ [1]կամ զընտանւոյ հօր իւրոյ, եւ
ասիցէ. Հանդերձք գոն քո, լեր մեր իշ-
խան, եւ [17]կերակուր մեր ընդ քեզ" լի-
7 ցի։ Տացէ պատասխանի յաւուր յայն-
միկ եւ ասասցէ, Ոչ եղէց իշխան, զի
ոչ գոյ ի տան իմում հաց եւ ոչ հան-
դերձ, եւ ոչ եղէց իշխան ժողովրդեանս
8 այսմիկ։ Զի [18]լքաւ Երուսաղէմ, եւ
Հրէաստան կործանեցաւ. [19]Եւ լեզուք
նոցա անօրէնութեամբք ի Տեառնէ ա-
9 պստամբեցին։ Վասն որոյ խոնարհեցան
փառք նոցա, եւ ամօթ երեսաց նոցա
ծածկեաց զնոսա." եւ զմեղս իւրեանց
իբրեւ զՍոդոմայեցւոցն պատմեցին եւ
յայտ արարին. վա՜յ անձանց նոցա՝ զի
10 [20]խորհեցան խորհուրդ չար առանձինն, Եւ
ասեն, Կապեսցուք զարդարն՝ զի դժպհի
եղեւ մեզ. այսուհետեւ" զպտուղս գոր-
11 ծոց իւրեանց կերիցեն։ Վա՜յ անօրինին,
[21]չարիք ըստ գործոց ձեռաց իւրոց անց-
12 ցեն ընդ նա։ Ժողովուրդ իմ, հարկա-
հանք ձեր [22]ճռաքաղ առնեն զձեզ, եւ
պահանջօղք" տիրեն ձեզ. Ժողովուրդ
իմ, որ երանեն ձեզ՝ խաբեն զձեզ, եւ
զշաւիղս ոտից ձերոց խռովեցուցանեն։
13 [23]Այլ արդ հասցէ Տէր ի դատաստան,
եւ կացուսցէ յատենի զժողովուրդ իւր."
14 Ինքնին Տէր ի դատ եկեսցէ ընդ ծերս
ժողովրդեան իւրոյ եւ ընդ իշխանս նո-
ցա. դուք [1]զի՞ հրկէզ արարէք զայգի
իմ, եւ յափշտակութիւն տնանկին է ի
15 տունս ձեր։ Դուք զի՞ զրկէք զժողովուրդ
իմ, եւ զերեսս տնանկաց լի առնէք ա-
մօթով, ասէ Տէր՝ Տէր զօրութեանց։
16 Այսպէս ասէ Տէր. Փոխանակ զի հպար-
տացան դստերք Սիոնի, եւ գնացին ի
բարձր պարանոց, յոնօք ակնարկէին,
եւ ի գնալս իւրեանց քարշէին զպատ-
րուս իւրեանց, եւ ոտիւքն կաքաւէին,
17 [24]Եւ խոնարհեցուսցէ Աստուած զիշխանս
դստեր Սիոնի, եւ մերկասցէ Տէր զգարդ

[1]Յեբր. պակաս [2]Եբր. ամբարձելոց [3]Եբր. Թարշիշի [4]Եբր. բարձրութիւն մարդոյ [5]Եբր. Եւ կուռք ապառապառ ջնջեսցին. (19) Եւ մտցեն [6]Եբր. Յաւուր յայնմիկ ընկեսցէ [7]Եբր. խլրդաց [8]Եբր. քարանց [9]Եբր. Ի բաց կացէք [10]Եբր. ի՞մ իմիք [11]Եբր. Զի ահաւասիկ [12]Եբր. զզօրութիւն եւ զզօրութիւն, [13]Եբր. վիղձ [14]Եբր. զպատուականն եւ զխորհրդական [15]Եբր. հարցուկ [16]Եբր. փոքրկունք

[17]Եբր. ուտելիս այս ընդ ձեռամբ քով [18]Եբր. տատանեցաւ [19]Եբր. վասն զի լեզուք նոցա եւ գործք նոցա հակառակ են Տեառն ի դառնացուցանել զաչս փառաց նորա։ (9) Տեսիլ երեսաց նոցա վկայէ ի նոսա. [20]Եբր. գործեցին իւրեանց չարիս։ (10) Ասացէք ցարդարն թէ բարւոք է, զի [21]Եբր. չար է, զի [22]Եբր. մանկունք, եւ կանայք [23]Եբր. Ել Տէր ի դատաստան, եւ եկաց ի դատել զժողովուրդս. [24]Եբր. Եւ հարցէ Տէր կնտութեամբ զգագաթունս դստերաց Սիոնի, եւ մերկասցէ Տէր զամօթ նոցա։

18 նոցա ։՝՝ Յաւուր յայնմիկ հանցէ Տէր
զփառս հանդերձից նոցա եւ զպաճուճա-
19 նանս նոցա, Եւ զհերս եւ զծամակալս
20 եւ զպսակակալս եւ զմանեակս, Եւ զպարդ
երեսաց նոցա եւ զպաճուճանս զարդու-
փառաց նոցա, եւ զքօղէս եւ զապա-
րանջանս եւ զմեհեւանդս եւ զգինդս,
21 Եւ զմատանիս եւ զկշտապանակս նոցա,
2 զգլխակս եւ զծեզանակս. Զնրբածիրա-
նին եւ զմիջնածիրանին, զսաւանին ար-
23 կանելի եւ զերեւելի լոկմայքն, Զբե-
հեզն եւ զկրկնազգն եւ զկարմիր չղա-
չաւեսն եւ զծամկալսն եւ զամկեճա-
24 մուկն եւ զսնկէտասուն ։ Եւ եղիցի փո
խանակ հոտոյն անուշից՝ փոշի, եւ փո-
խանակ կամարայն՝ չուան գօտի, եւ
փոխանակ ոսկի զարդու գլխոյն՝ կնտու-
թիւն, վասն գործոց քոց, եւ փոխանակ
25 ոսկեհուռ զիրակին՝ քուրձ զգեցցիս ։ Եւ
[1]որդիք քո գեղեցիկ զոր սիրես՝ սրով մեռցին,
26 եւ իշխանք ձեր սրով անկցին. Եւ թշուա-
ռասցին եւ սուգ զգեցցին տապանք զար-
դուց ձերոց, եւ մնասցիս միայն եւ յերկիր
կործանեսցիս՝՝ ։

ԳԼ. Դ

1 Եւ բուռն հարկանիցեն եւթն կին զառ-
նէ միոջէ[2] եւ ասիցեն, Հաց՝ զմեր կե-
րիցուք, եւ հանդերձ՝ զմեր զգեցցուք,
բայց միայն անուն քո կոչեսցի ի վերայ
մեր. բարձ ի մէնջ զնախատինս մեր ։
2 Յաւուր յայնմիկ [3]ծագեսցէ Աստուած
խորհրդովք փառօք իւրովք յերկիր,
բարձրացուցանել եւ փառաւոր առնել
3 զմնացորդս՝՝ Իսրայէլի ։ Եւ մնացորդքն
Սիոնի, եւ մնացորդքն Երուսաղեմի
սուրբ կոչեսցին՝ ամենեքեան որ գրե-
4 ցան յԵրուսաղէմ ի կեանս, [4]Զի լուա-
ցէ Տէր զաղտն ուստերաց եւ դստե-
րաց Սիոնի եւ զԵրուսաղեմի, եւ զա-
րիւնն՝՝ ի բաց սրբեսցէ ի միջոյ նորա
հոգւով դատաստանաց եւ հոգւով այր-
5 ման ։ Եւ [5]եկեսցէ, եւ եղիցի ամենայն
տեղի լերինն Սիոնի եւ ամենայն որ շուրջ
զնովաւ իցէ՝՝ հովանի ամպոյ ի տուէ, եւ
իբրեւ զծուխ եւ զլոյս հրոյ բորբոքելոյ
ի գիշերի, [6]ամենայն փառօք ծածկեսցի ։
6 Եւ եղիցի հովանի ի տօթոյ, եւ յարկ ծած-
կութեան ի խստութենէ՝՝ եւ յանձրեւոյ ։

ԳԼ. Ե

1 [7]Երգեցից սիրեցելոյ այգւոյ իմոյ զերգս
սիրելւոյ նորա. Այգի եղեւ սիրեցելոյն
յանկեան՝՝, ի տեղւոջ պարարտութեան ։
2 [8]Ցանգով փակեցի, ձողարարձ զարդա-
րեցի, եւ անկեցի որթ սորեկ. աշտա-
րակ շինեցի՝՝ ի միջի նորա, եւ զուբ հնծան
[9]փորեցի ի նմա. եւ մնացի՝՝ զի բերցէ
խաղող, եւ եբեր [10]փուշ ։
3 Եւ այժմ, արք Յուդայ եւ բնակիչք
Երուսաղեմի, դատ արարէք ընդ իս եւ
4 ընդ այգի իմ ։ Զի՞նչ ինչ առնել էր այգ-
ւոյ իմում, եւ ես ոչ արարի նմա. մնացի
5 զի բերցէ խաղող՝ եւ եբեր [10]փուշ ։ Եւ
արդ ես ինձէն պատմեցից ձեզ զինչ արա-
րից ընդ այգի իմ. քակեցից զցանգ նո-
րա, եւ եղիցի յափշտակութիւն. կոր-
ծանեցից զպարիսպս նորա, եւ եղիցի
6 ի կոխումն ։ Եւ թողից [11]զայգի իմ՝՝, եւ
մի՛ յատցի եւ մի՛ բրեսցի, եւ բուսցի ի
նմա փուշ [12]իբրեւ ի խոպանի՝՝. եւ պա-
տուէր տաց ամպոց իմոց՝ զի մի՛ տե-
7 ղասցեն յայգի իմ ։ Զի այգի Տեառն զօ-
րութեանց՝ տունն Իսրայէլի է, եւ մարդն
Յուդայ՝ նորատունկ սիրելի. [13]մնացի զի
արասցէ իրաւունս, եւ արար անիրա-
ւութիւն, եւ ոչ արդարութիւն՝ այլ ա-
ղաղակ ։
8 Վա՜յ այնոցիկ որ յարեն տուն ի տուն,
եւ ագարակ առ ագարակ մերձեցուս-
ցեն, [14]զի զընկերին հանիցեն՝՝. միթէ
9 միա՞յն բնակելոց իցէք յերկրի ։ Նա ա-
ւանիկ այդ եղեւ [15]յականջս Տեառն զօ-
րութեանց այդ ամենայն՝՝. զի եթէ ե-
ղիցին տունք բազումք, սակայն յաւեր

---

[1] Եբր. Արք քո խուր անկցին և զօրաւորք քո ի պատերազմի ։ (26) Եւ դրունք նորա ողբասցեն, եւ ամայացեալ նստցի ի գետնի [2] Եբր―յէօթ յ―եղ―, յաւուր յայնմիկ [3] Եբր. եղիցի շառաւիղ Տեառն ի վայելչութիւն և ի փառս, եւ պտուղ երկրին ի պարծանս եւ ի պատիւ մնացորդացն [4] Եբր. Յորժամ լուասցէ Տէր զաղտն դստերաց Սիոնի, և զարիւն Երուսաղեմի [5] Եբր. արարցէ Տէր ի վերայ ամենայն տեղեաց բնակութեան լերինն Սիոնի, եւ ի վերայ գումարութեան նորա

[6] Եբր. զի ի վերայ ամենայն փառաց եղիցի ծածկոյթ ։ (6) Եւ եղիցի տաղաւար ի հովանի զտիւ ի տօթոյ, եւ յապաւէն եւ ի ծածկութիւն՝ ի մրրկէ [7] Եբր. Երգեցից արդ սիրելւոյ իմում զերգ սիրելւոյ իմոյ, զայգւոյ նորա. Այգի եղեւ սիրելւոյ իմոյ ի բլրի ուրեք [8] Եբր. Հատ խրամ զնովաւ, հան ի բաց զքարինս նորա, և անկեաց որթ ընտիր, և աշտարակ շինեաց [9] Եբր. փորեաց ի նմա եւ մնայր [10] Եբր. խաղող վայրի [11] Եբր. զնա խապանեցեալ [12] Եբր. եւ տատասկ [13] Եբր. եւ մնաց [14] Եբր. մինչեւ չմնալոյ տեղի [15] Եբր. յականջս իմ ի Տեառնէ զօրութեանց

դարձցին. եւ եթէ մեծամեծք եւ գե-
ղեցիկք իցեն, ոչ ոք իցէ որ բնակիցէ
10 ի նոսա։ Զի ուր գործիցեն տասն լուծք
եզանց, եղիցի անդ սափոր մի. եւ որ
սերմանիցէ [1]արդուս վեց", ժողովեսցէ
11 [2]գրիւս երիս"։ Վա՛յ այնոցիկ ոյք յառնեն
ընդ առաւօտս եւ զհետ լինին ցքոյն,
որ երեկոյեան ի նմին. զի գինին բոց
12 անդէն զնոսին այրէ։ Փողովք եւ թմբկաւ
եւ քնարաւ եւ երգովք զգինին ըմպեն,
եւ ի գործս Տեառն ոչ հային, եւ զգործս
13 ձեռաց նորա ոչ տեսանեն ի միտ։ Այսու-
հետեւ ի գերութիւն մատնեցաւ ժողո-
վուրդ իմ, վասն ոչ ճանաչելոյ նոցա
զՏէր, եւ [3]բազում եղեն դիակունք նո-
ցա վասն սովոյ հացի եւ ծարաւոյ ջրոյ։
14 Եւ" լայնեցին դժոխք զանձինս իւ-
րեանց, եւ բացին զբերանս իւրեանց՝
[4]զի մի՛ դադարեսցեն. եւ իջցեն փա-
ռաւորք եւ մեծամեծք եւ մեծատունք եւ
ժանտագործք նոցա", եւ զուարճասցին
15 ի նմա։ Եւ խոնարհեսցի մարդ, եւ ա-
նարգեսցի այր. եւ աչք ամբարտաւանք
16 խոնարհեսցին. Եւ բարձրասցի Տէր զօ-
րութեանց իրաւամբք, եւ Սուրբն Ա-
տուած փառաւորեսցի արդարութեամբ։
17 Եւ արածեսցին [5]յափշտակեալքն իբրեւ
ցուլք, եւ զաւերակս մնացելոցն գա-
ռինք" կերիցեն։
18 Վա՛յ այնոցիկ ոյք ձգեն զմեղս իւ-
րեանց իբրեւ [6]երկայն պարանաւ, եւ
իբրեւ փոկով լծոյ երինջոյ՝ զանօրէնու-
19 թիւնս։ Ոյք ասեն թէ Վաղվաղակի մեր-
ձեսցի զոր առնելոցն իցէ՝ զի տեսցուք,
եւ եկեսցէ խորհուրդ Սրբոյն Իսրայելի՝
20 զի գիտասցուք։ Վա՛յ այնոցիկ ոյք ա-
սիցեն զչարն բարի, եւ զբարին չար.
ոյք դնիցեն զլոյսն խաւար, եւ զխա-
ւարն լոյս. ոյք դնիցեն դդառն քաղցր,
21 եւ զքաղցրն դառն։ Վա՛յ այնոցիկ որ
զանձինս առ իմաստունս ունիցին, եւ
յաչս անձանց իւրեանց խորհրդականք։
22 [7]Վա՛յ հզօրացդ ձերոց որ ըմպեն զգի-
նին, եւ իշխանացդ որ խառնեն զցքին."
23 Որ արդարացուցանեն զամպարիշտն վասն
կաշառոց, եւ զիրաւունս զողանան զար-
24 դարոյն։ Վասն այնորիկ՝ որպէս վառի
եղէգն ի կայծականց հրոյ, [8]այնպէս այ-
րեսցին" ի բորբոքեալ բոցոյ. եւ արմատ
նոցա իբրեւ զմղեղ եղիցի, եւ ծաղիկ
նոցա իբրեւ զփոշի ելանիցէ. զի ոչ կա-
մեցան զօրէնս Տեառն զօրութեանց,
այլ եւ [9]զրգռեցին եւս զբանս Սրբոյն
25 Իսրայելի։ Եւ բարկացաւ սրտմտութիւն
Տեառն զօրութեանց ի վերայ ժողովըր-
դեան իւրոյ, եւ արկ զձեռն իւր ի վե-
րայ նոցա եւ սատակեաց զնոսա, [10]բար-
կացաւ ի վերայ լերանց", եւ եղեն դիա-
կունք նոցա իբրեւ աղբ ճանապարհաւ.
ի վերայ այսր ամենայնի ոչ դարձաւ
սրտմտութիւն նորա, այլ տակաւին ձեռն
իւր բարձրացեալ է։
26 Այսուհետեւ ամբարձցէ նշան յազգս
հեռաւորս, եւ [11]ածցէ զնոսա" ի ծագաց
երկրի. եւ ահա վաղվաղակի արագս
ընթասցին, եւ թեթեւս հասանիցեն։
27 Ոչ քաղցիցեն եւ ոչ վաստակեսցեն, եւ
ոչ նիրհեսցեն եւ ոչ ննջեսցեն, եւ ոչ
լուծցեն զգօտիս ի միջոյ իւրեանց, եւ
28 ոչ հատցին խրացք կօշկաց նոցա։ Որոց
նետք իւրեանց սրեալ են, եւ աղեղունք
լարեալք. սմբակք երիվարաց նոցա իբ-
րեւ զվէմ հաստատուն համարեցան, ա-
29 նիւք կառաց նոցա իբրեւ զմրրիկ։ [12]Դի-
մեսցեն իբրեւ զառիւծուն, եւ հասցեն"
իբրեւ զկորիւնս առիւծուց, գոչեսցեն
եւ յարձակեսցին եւ հասցեն գազանա-
բար, եւ ոչ ոք իցէ որ փրկիցէ զնոսա։
30 Աղաղակ արասցեն վասն նոցա յաւուր
յայնմիկ իբրեւ զձայն ծովու ամբոխե-
լոյ ալեօք. [13]հայեսցին յերկինս ի վեր
եւ յերկիր ի խոնարհ, եւ ահա խաւար
խաւարութեան ի տարակուսանս նոցա"։

## ԳԼ. Զ

1 Եւ եղեւ յամին յորում մեռաւ Ոզիա
արքայ, տեսի զՏէր նստեալ յաթոռ
բարձրութեան եւ վերացելոյ. եւ լի էր
2 տունն [14]փառօք նորա։ Եւ սերովբէք կա-
յին [15]շուրջ զնովաւ". վեց թեւք միոյ եւ

[1]Եբր. բոռ [2]Կամ. արդու [3]Եբր. փառաւորք նորա եղեն սովամահ, և ամբոխ նորա ցամաքեցաւ ի ծարաւոյ ։(14)Վասն որոյ [4]Եբր. անհնարինս, եւ իջցեն փառք նորա եւ ամբոխ նորա և աղաղակ նորա [5]Եբր. գառինք ըստ օրինի (կամ. յարօտս), և զաւերակս պարարտաց օտարք [6]Եբր. ունայնութեան [7]Եբր. Վա՜յ որ հզօրքն են ըմպել գինի, եւ արք զօրութեան ի խառնել ցքի.

[8]Եբր. եւ խար ապառեսցի [9]Եբր. անարգեցին [10]Եբր. եւ սասանեցան լերինք [11]Եբր. շչեսցէ նոցա [12]Եբր. Մռնչիւն նոցա իբրեւ զառիւծու, եւ մռնչեսցեն [13]Եբր. և ի հայել ուրուք յերկիր՝ ահա խաւար, անձկութիւն, եւ լոյս նսեմացեալ յերկրի նոցա [14]Եբր. քղանցիւք [15]Եբր. ի վերուստ նորա

վեց թեւք միոյ․ երկուքն ծածկէին զե-
րեսս իւրեանց, եւ երկուքն ծածկէին
զոտս իւրեանց, եւ երկուքն թռուցեալ։
3 Աղաղակէին մի առ մի՝ եւ ասէին, Սուրբ,
սուրբ, սուրբ՝ Տէր զօրութեանց, լի է
4 ամենայն երկիր փառօք նորա։ Եւ վե-
րացաւ դրանդն ի ձայնէն զոր աղաղա-
5 կէին, եւ տունն լի եղեւ ծխով։ Եւ ա-
սեմ, Վա՜յ է ինձ, [1]ես այր տառապեալ
զի՞նչ կամս հիացեալ՚. զի մարդ եմ՝
եւ պիղծ շրթունս ունիմ, եւ ի մէջ
պղծաշուրթն ժողովրդեան բնակեալ եմ
ես. [2]եւ զՏէր զօրութեանց տեսի աչօք
6 իմովք։ Եւ առաքեցաւ առ իս մի ի սե-
րովբէից անտի, եւ ի ձեռին իւրում ունէր
կայծակն, զոր առեալ ունելեօք ի սեղանոյ
7 անտի, Եւ մերձեցոյց ի բերան իմ,
եւ ասէ, Ահաւասիկ մերձեցաւ այդ ի
շրթունս քո, եւ հանցէ զանօրէնութիւնս
քո. եւ զմեղս քո սրբեսցէ ի քէն։
8 Եւ լուայ զբարբառ Տեառն որ ասէր,
Զո՞ առաքեցից եւ կամ ո՞վ երթիցէ
[3]առ այն ժողովուրդ՚։ Եւ ասեմ,
9 Ահաւասիկ ես, առաքեա զիս։ Եւ
ասէ, Երթ եւ ասա ցժողովուրդն յայն,
Լսելով լուիջիք եւ մի՛ իմասջիք, եւ
տեսանելով տեսջիք եւ մի՛ գիտասջիք։
10 [4]Զի թանձրացաւ սիրտ ժողովրդեանդ
այդորիկ, եւ ականջօք իւրեանց ծա-
նուանս լուան, եւ զաչս իւրեանց կա-
փուցին՚, զի մի՛ երբեք տեսանիցեն ա-
չօք, եւ լուիցեն ականջօք, եւ իմա-
նայցեն սրտիւք, եւ դառնայցեն եւ
11 բժշկեցից զնոսա։ Եւ ասեմ, Մինչեւ
յե՞րբ, Տէր։ Եւ ասէ, Մինչեւ աւերես-
ցին քաղաքք ի բնակչաց, եւ տունք ա
ի չգոյէ մարդկան, եւ մնասցէ երկիրդ
12 աւերակ։ [5]Եւ յետ այնորիկ յերկարեսցէ
Աստուած մարդկան, եւ բազմասցին
13 մնացեալքն յերկրի։ Սակայն եւ ի նմա-
նէ տասանորդեսցեն. եւ դարձեալ եղի-
ցին ի գերութիւն եւ յափշտակութիւն,
իբրեւ զբեւեկնի եւ իբրեւ զկաղնի թօ-
թափեալ յիւրաքանչիւր պատենից զա-
ւակն սուրբ արձանութիւն նորա՚։

Գլ. Է

1 Եւ եղեւ յաւուրս Աքազու Յովաթա-
մայ, որդւոյ Ոզիայ, թագաւորին Հրէ-
աստանի, ել Ռասին արքայ Արամայ,
եւ Փակէէ որդի Ռովմելեայ արքայի
Իսրայէլի ի վերայ Երուսաղեմի, տալ
ընդ նմա պատերազմ. եւ ոչ կարացին
2 [6]պաշարել զնա՚։ Եւ եղեւ ի տուն
Դաւթի եւ ասեն, Միաբանեաց Արամ
ընդ Եփրեմայ, եւ զարհուրեցաւ անձն
նորա եւ անձն ժողովրդեան նորա, զոր
օրինակ շարժիցի յանտառի ծառ մի ի
3 հողմոյ։ Եւ ասէ Տէր ցԵսայի, Ել ընդ
առաջ Աքազու, դու եւ [7]մնացեալ որ-
դին քո Յասուբ, հանդէպ աւազանին
վերին՚ ճանապարհի ագարակին թափ-
4 չի. Եւ ասասցես ցնա, Զգոյշ լեր, հան-
գարտեա, եւ մի՛ երկնչիր, եւ մի՛ զար-
հուրեսցի անձն քո յերկուց փայտից
խանձողայն ծխելոց, [8]զի յորժամ հա-
սանիցէ բարկութիւն սրտմտութեան
իմոյ, դարձեալ բժշկեցից։ Եւ որդին
5 Արամայ եւ որդին Ռովմելեայ՚ Զի խոր-
հեցան խորհուրդ չար, [9]Եփրեմ եւ որ-
6 դին Ռովմելեայ զքէն եւ ասեն, Ելցուք
ի Հրէաստան, [10]խօսեսցուք ընդ նոսա,
դարձուսցուք զնոսա՚ առ մեզ, եւ կա-
ցուսցուք նոցա թագաւոր զորդին Տա-
7 բեղայ. Այսպէս ասէ Տէր զօրութեանց.
Մի՛ կացցէ խորհուրդն այն, եւ մի՛ եղի-
8 ցի. Այլ գլուխ Արամայ Դամասկոս, եւ
գլուխ Դամասկոսի Ռասին. եւ այլ եւս
վաթսուն եւ հինգ ամ, եւ ապա [11]պա-
կասեսցէ թագաւորութիւնն Եփրեմայ ի
9 ժողովրդենէ անտի՚։ Եւ գլուխ Եփրե-
մայ [12]Սամարոնն, եւ գլուխ [13]Սամարոնի
որդին Ռովմելեայ. եւ եթէ ոչ հաւա-
տայցէք, [14]եւ ոչ ի միտ առնուցուք՚։
10 Եւ յաւել Տէր խօսել ընդ Աքազու եւ
11 ասէ, Խնդրեա դու քեզ նշան ի Տեառնէ

---

[1] Ոմանք. զի կորեայ [2] Ոմանք. քանզի զԹագաւորն՝
[3] Ոմանք. վասն մեր [4] Ոմանք. Թանձրացո զսիրտ ժողովրդեանդ այդորիկ, եւ ծանրացո զականջս նոցա, եւ կափո զաչս նոցա, [5] Ոմանք. Եւ հեռացուսցէ Տէր զմարդն, եւ բազմասցի ամայութիւն ի մէջ երկրի. (13) Սակայն եւ ի նմա մնասցէ տասանորդ. եւ այն եւս դարձի եւ կերիցի, իբրեւ զբեւեկնի եւ իբրեւ զկաղնի որոյ մնայցէ բուն ի հատանել նորա, այսպէս զաւակն սուրբ բուն նորա է։

[6] Ոմանք. կռուել ընդ նմա [7] Ոմանք. Սէար Յասուբ, որդի քո, ի ծայր ջրմղի աւազանին վերնոյ, ի
[8] Ոմանք ի սաստիկ բարկութենէն Ռասինայ և Արամայ, եւ որդւոյն Ռովմելեայ։ [9] Ոմանք. Արամ, Եփրեմ
[10] Ոմանք. եւ ընդդատեսցուք զնա, եւ խորտակեսցուք զնա [11] Ոմանք. դադարեսցի Եփրեմ ի լինելոյ ժողովուրդ [12] Այլուրեք՝ Սամարիա, [13] Այլուրեք Սամարեայ [14] Ոմանք. ոչ եղիջիք յապահովս

Աստուծոյ քումմէ ի խորութեան կամ
12 ի բարձրութեան։ Եւ ասէ Աքազ, Ոչ
13 խնդրեցից եւ ոչ փորձեցից զՏէր։ Եւ
ասէ, Արդ լուարուք, տունդ Դաւթի.
Թեթե՞ւ ինչ թուի ձեզ աշխատու-
թիւն հասուցանել մարդկան, [1]եւ զիա՞րդ
հասուցանէք աշխատութիւն Տեառն”։
14 Վասն այդորիկ տացէ ձեզ Տէր ինքնին
նշան. Ահա կոյս յղասցի եւ ծնցի որդի,
եւ կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ։
15 Եւղ եւ մեղր կերիցէ. [2]մինչչեւ ինչ իցէ
ծանուցեալ նորա կամ ախորժեալ յառա-
ջագոյն զչարութիւն, ընտրեսցէ զբարին։
16 Վասն այնորիկ մինչչեւ ծանուցեալ իցէ
մանկանն զբարի կամ զչար, անարգեսցէ
զչարին եւ ընտրեսցէ զբարին. եւ մնասցէ
երկիրդ յորմէ” դուդ կասկածես՝ յերեսաց
17 երկուց թագաւորացն։ Այլ ածցէ Աս-
տուած ի վերայ քո եւ ի վերայ ժողո-
վրդեան քո եւ ի վերայ տան հօր քո
աւուրս՝ որ չեւ եւս են եկեալ, յորմէ
օրէ [3]եհան Եփրեմ ի Հրէաստանէ զար-
18 քայն” Ասորեստանեայց։ Եւ եղիցի
յաւուր յայնմիկ շարժեսցէ Տէր զճան-
ճիճն՝ [4]որ տիրեսցէ” յանկոյս գետոյն
Եգիպտացւոց, եւ զձիաստայն՝ որ է
19 յերկրին Ասորեստանեայց։ Եւ եկեսցեն
ամենեքեան, եւ հանգիցեն ի ձորս երկ-
րիդ եւ ի ծերպս վիմաց եւ յայրս, եւ
յամենայն փապարս եւ յամենայն փայտս։
20 Յաւուր յայնմիկ գերծցէ Տէր [5]սրովն մե-
ծաւ եւ արբեցելով, որ է յանկոյս գետոյն
թագաւորին Ասորեստանեայց”, զգլուխ
եւ զմազ ոտից, եւ զմօրուսն սրբեսցէ։
21 Եւ եղիցի յաւուր յայնմիկ բուծցէ մարդ
երինջ մի յարջառոց եւ մաքիս երկուս.
22 Եւ եղիցի ի բազմութենէ կաթինն՝ կե-
րիցէ եւղ. զի եւղ եւ մեղր կերիցէ ա
23 մենայն որ մնացեալ իցէ յերկրին։ Եւ
եղիցի յաւուր յայնմիկ, եղիցի ամենայն
տեղի ուր իցէ հազար որթ՝ հազար կշռոյ
սկեղ. խոպանասցի եւ ի փուշ դարձցի.
24 Նետովք եւ աղեղնաւորք մտանիցեն
անդր. զի խոպանացեալ եւ փշալից ե-
25 ղիցի ամենայն երկիր. [6]Եւ ամենայն
լեառն արօրադիր սկօսարեկ լիցի. եւ
մի՛ հասցէ անդր երկեւղ, զի եղիցի ի
խոպանէն եւ ի փշոյ՝ յարօտ զուարին եւ
ի կոխան եղին։”

## ԳԼ. Ը

1 Եւ ասէ ցիս Տէր, Ա՛ռ դու քեզ տոմս
մի *նոր մեծ, եւ գրեսցես ի նմա գրչաւ
սան ճարտարի, [7]Արագարագ աւար հար-
կանել՝ եւ վաղվաղակի զաւրուն ժողովել.
2 քանզի հասեալ է”։ Եւ վկայս [8]կացուս-
ցես ինձ արս հաւատարիմս, զՈւրիա
քահանայ եւ զԶաքարիա որդի Բարա-
3 քեայ։ Եւ մերձեցայ առ կինն իմ մար-
գարէ, եւ յղացաւ եւ ծնաւ որդի. եւ
ասէ ցիս Տէր, Կոչեա զանուն նորա՝
[7]Արագարագ կապտեա՛ Ջիր՝ եւ վաղվա-
4 ղակի աւար հարկանիջիր.” Քանզի մինչ-
չեւ ծանուցեալ իցէ մանկանն կոչել
զհայր կամ զմայր, [9]առցէ զզօրութիւն
Դամասկոսի եւ զաւար Սամարիայ”
յանդիման թագաւորին Ասորեստանեայց։
5 Եւ յաւել եւս խօսել ընդ իս Տէր եւ
6 ասէ, Փոխանակ զի ոչ ախորժեաց ժո-
ղովուրդդ այդ զՋուրն Սիլովայ որ գնայ
խաղաղ, այլ [10]կամեցան ունել իւրեանց
թագաւոր զՌասիմ եւ զորդին Ռոմ-
7 մելայ”, Վասն այդորիկ ահաւասիկ ածցէ
Տէր ի վերայ [11]ձեր զՋուր Գետոյն զհզօրն
եւ զյորդ՝ զարքայն Ասորեստանի եւ
զփառս նորա. եւ եկեսցէ հասցէ յամե-
նայն ձորս [12]ձեր, եւ ճեմեսցի ի վերայ
8 պարսպաց ձերոց։ Եւ հանցէ յերկրէդ
Հրէաստանէ զայր որ կարող իցէ ամ-
բառնալ զգլուխ իւր, եւ զզօրաւորն որ
կարիցէ գործել ինչ. եւ եղիցի բանակ
նորա լնուլ զլայնութիւն երկրիդ քո։
9 Ընդ մեզ Աստուած՝ գիտասցէք, հեթա-

[1] Եբր. զի աշխատութիւն հասուցանէք Աստուծոյ իմում [2] Եբր. մինչեւ գիտասցէ անարգել զչարն եւ ընտրել զբարին։ (16) Զի մինչչեւ ծանուցեալ մանկանն անարգել զչարն եւ ընտրել զբարին, թողցի երկիրն յորոյ [3] Եբր. մեկնեցաւ Եփրեմ ի Հրէաստանէ, այսինքն՝ զարքայն [4] Եբր. որ է [5] Եբր. ածելեաւն վարձկանաւ, թագաւորաւն Ասորեստանեայց որ յայնկոյս Գետոյն

[6] Եբր. Եւ ամենայն լերինք որ բրին բրչաւ՝ մի՛ երթիցէք անդր առ երկիւղի փշոյ եւ խոպանի, եւ եղիցին յարօտ եզին եւ ի կոխան ոչխարաց։ * Եբր. գ-լ-ն-է [7] Եբր. Մահեր շալալ հաշ պազ [8] Եբր. կացուցի [9] Եբր. տարցի զօրութիւնն Դամասկոսի եւ աւարն Սամարիայ [10] Եբր. հաճեցան ընդ Ռասիմ եւ ընդ որդին Ռոմելեայ [11] Եբր. նոցա [12] Եբր. նորա, եւ դնասցէ ի վերայ ամենայն ափանց նորա։ (8) Եւ անցցէ ընդ Յուդա, ողողեսցէ եւ անցցէ, մինչեւ ի պարանոց անդր հասցէ. եւ եղիցի տարածութիւն թեւոց նորա լրութիւն լայնութեան երկրի քո, ով Էմմանուէլ։ (9) Յեծացէք, հեթանոսք, եւ պարտեցարուք, եւ լուարուք ամենեքին ի հեռաւոր երկրի. պնդեցէք զմէջս, այլ ի պարտութիւն մատնեսջիք. պնդեցէք զմէջս,

նոսք, եւ պարտեցարուք. լսելի արա-
րէք մինչեւ ի ծագս երկրի, հզօրացեալքդ
պարտեցարուք. զի թէպէտ եւ դար-
ձեալ զօրանայցէք," դարձեալ ի պար-
10 տութիւն մատնեսջիք: Եւ զո՛ր խորհուրդ
եւ խորհիցիք՝ ցրուեսցէ Տէր, եւ զո՛ր
բան եւ խօսիցիք՝ մի՛ հաստատեսցի ձեզ.
11 քանզի ընդ մեզ [1]Տէր Աստուած է: [2]Այս-
պէս ասէ Տէր սա այնոցիկ որ զօրու-
թեամբ ձեռին նորա ընդդէմ գնանն ընդ
գնացից ճանապարհի ժողովրդեանս այ-
12 սորիկ, Եւ ասեն թէ ոչ երբեք խօսի-
ցին խստութիւն. զի ամենայն զոր ինչ
խօսի ժողովուրդս այդ՝ խստութիւն է.
եւ յերկիւղէ նոցա մի՛ երկնչիցիք, եւ մի՛
13 խռովեսջիք:" ԶՏէր զօրութեանց զնոյն
սուրբ արասջիք, եւ նա եղիցի ձեզ
յերկեւղ, [3]եւ եթէ ի նա յուսացեալ ի-
14 ցես, եղիցի քեզ ի սրբութիւն. եւ ոտն
քո զքարի ոչ հարկանիցի, եւ գայթակ-
ղութիւն քեզ ոչ պատահեսցէ. բայց տունն
Յակոբու յորոգայթ եւ ի ծուղակս գա-
15 րանակալայ Երուսաղեմի: Վասն այնո-
րիկ տկարասցին ի նմա բազումք, անկ-
ցին եւ խորտակեսցին, եւ մերձեսցին ի
պաշարումն մարդիկ որ ի չինութեան
16 իցեն: Յայնժամ ժամանակի յայտնեսցին
17 որ կնքիցեն զօրէնս. Զի մի՛ ոք ուսա-
նիցի եւ ասիցէ, Կացից մնացից Աս-
տուծոյ" որ դարձոյց զերեսս իւր ի տա-
նէն Յակոբու, եւ եղէց յուսացեալ ի
18 նա: Ահաւասիկ ես եւ մանկունք իմ
զոր ետ ինձ [4]Աստուած. եւ եղիցին
նշանք եւ արուեստք ի վերայ տանն
Իսրայելի" ի Սաբաւովթ Տեառնէ որ
բնակեալ է ի լերինն Սիոնի:
19 Եւ եթէ ասիցեն ցձեզ, Խնդրեցէք
զվհուկս եւ զգէտնակոչս եւ զգրախօսս
եւ զորովայնակոչս, [5]ոչ իբրեւ զազգ
ոք որ" յԱստուծոյ իւրմէ խնդրիցէ. զինչ
խնդրիցեն վասն կենդանեաց ի մեռելոց
20 անտի. [6]Զի զօրէնս յօգնականութիւն
ետ. զի ասիցեն թէ ոչ իբրեւ զբանս
զայս, վասն որոյ չիք կաշառս տալ
21 վասն նորա: Եւ եկեսցէ ի վերայ ձեր սով
խստութեամբ. եւ եղիցի իբրեւ քաղ-
ցիցէք՝ տրտմեսջիք, եւ հայհոյեսջիք զիշ-
խանն եւ զաչխարհ". եւ ամբարձցեն
22 զաչս իւրեանց յերկինս ի վեր, Եւ հա-
յեսցին յերկիր ի խոնարհ, եւ ահա կա-
րօտութիւն եւ տառապանք եւ խաւար,
նեղութիւն եւ անձկութիւն, [7]եւ մութ.
զի ոչ ոք կարիցէ տեսանել. եւ որ իցէ
ի նեղութեանն՝ մի՛ նուաղեսցէ մինչեւ
ի ժամանակն":

ԳԼ. Թ

1 [8]Հասա նախ զայս արբ, վաղվաղակի
հետ արա. երկիր Զաբուղոնի եւ երկիր
Նեփթաղիմի՝ ճանապարհ ծովու. եւ
այլք որ բնակեալ էք զծովեզերբք, եւ
յայն կոյս Յորդանանու. Գալիլեա հե-
թանոսաց, կողմանք Հրէաստանի" Ժո-
2 ղովուրդ որ գնայր ընդ խաւար՝ տեսէս
լոյս մեծ, եւ որ բնակեալ [9]էք յաշխարհի
եւ ի ստուերս մահու՝ լոյս ծագեսցէ
3 ձեզ: Զմեծ մասն ժողովրդեանդ զոր
իջուցեր յուրախութիւն քո, եւ ուրախ
եղիցին" առաջի քո՝ որպէս ուրախ լինի-
ցին ի հունձս, եւ [10]որպէս որ բաժա-
4 նիցեն զաւար. Զի [11]վերացաւ ի նո-
ցանէ լուծն որ կայր ի վերայ, եւ գա-
ւազանն որ ի վերայ պարանոցի նոցա.
զի զգաւազան պահանջողացն մերժեաց"

[1]Յեբր. [illegible]  [2]Յեբր. Քանզի այսպէս ասէ Տէր ցիս զօրութեամբ ձեռին. եւ խրատեաց զիս ի գնալոյ զճանապարհ ժողովրդեանս այսորիկ, եւ ասէ, (12) Մի՛ ասէք դաշն ամենայնի զոր ասէ ժողովուրդս այս դաշն. եւ զերկեւղ նորա մի՛ երկնչիցէք, եւ մի՛ զարհուրեսջիք: [3]Յեբր. և նա իցէ ահ ձեր. (14) Եւ նա եղիցի ի սրբութիւն. առակայն ի քար գայթակղութեան եւ ի վէմ գլորման երկոցունց տանց Իսրայելի, ի հարդ և յորոգայթ բնակչացն Երուսաղեմի: (15) Եւ գլորեսցին ի նմա բազումք, եւ անկցին, եւ խորտակեսցին, եւ եղիցին թակարդապատ եւ ըմբռնեսցին: (16) Հաստատեա վկայութիւն և կնքեա օրէնս ընդ աշակերտս իմ. (17) Արդ ես կացից մնացից Տեառն  [4]Յեբր. Տէր, ինչպէս և յարուեստս յԻսրայելի,

[5]Յեբր. ասասջիք, Ո՞չ ապաքէն ժողովուրդն  [6]Յեբր. Հարցցեն օրինաց և վկայութեան. եթէ չասիցեն ըստ բանիս ըստ այսմիկ, չիք նոցա լոյս: (21) Եւ անցցէ ծանրացեալ ընդ այն նեղեալ և քաղցեալ. և եղիցի իբրեւ քաղցիցեն, և բարկասցին, և հայհոյեսցեն զթագաւոր իւրեանց եւ զԱստուած իւրեանց  [7]Յեբր. եւ մթով վարեսցին  [8]Յեբր. Այլ ոչ եղիցի աղջամուղջ, որպէս եղեւ ի նեղութեան նորա ըստ առաջնոյ ժամանակին յանարգել նորա զերկիրն Զաբուղոնի եւ զերկիրն Նեփթաղիմայ, եւ ի վախճանի փառաւորեսցէ զճանապարհ ծովուն, յայնկոյս Յորդանանու, Գալիլեա հեթանոսաց:  [9]Յեբր. են յերկրին ստուերաց մահու՝ լոյս ծագեաց նոցա: (3) Բազմացուցեր զազգն, մեծ արարեր զուրախութիւն նորա. ուրախ եղեւ  [10]Յեբր. որպէս ցնծացեն  [11]Յեբր. զլուծ ծանրութեան նորա, եւ զգաւազանն թիկանց նորա, զցուպ հարկահանաց որ ի նմա՝ խորտակեցեր

5 որպէս եւ յաւուրն Մադիամու. [1]Զի զա-
մենայն պատմուճան եւ զհանդերձ ժո-
ղովեալ նենգութեամբ՝ տուգանօք տու-
ժեսցեն։ Այլ նոքա կամէին թէ հրձիգ
լեալ էին։՝՝
6 Զի մանուկ ծնաւ մեզ, որդի տուաւ
մեզ, որոյ իշխանութիւն իւր եղեւ ի
վերայ ուսոց իւրոց. եւ անուն կոչե-
ցաւ նմա՝ [2]Հրեշտակ մեծի խորհրդոյ,՝՝
Սքանչելի, Խորհրդակից, Աստուած
Հզօր, [3]Իշխան, Հայր հանդերձելոյ աշ-
7 խարհին։ Եւ ես ածից զխաղաղութիւն
ի վերայ իշխանաց նորա, եւ առողջու-
թիւն նմա. մեծ է իշխանութիւն՝՝ նո-
րա, եւ խաղաղութեան նորա չիք սահ-
ման յաթոռն Դաւթի [4]նստցի, եւ
զարքայութիւն նորա յաջողեսցէ, եւ
զօրացուսցէ՝՝ զնա իրաւամբք եւ արդա-
րութեամբ, յայսմ հետէ եւ յաւիտեանս
ժամանակաց։ Նախանձ Տեառն զօրու-
թեանց արասցէ զայս։
8 [5]Մահ առաքեաց Տէր ի վերայ Յակոբայ,
9 եկն եհաս ի վերայ Իսրայելի։ Եւ ծանիցեն
ամենայն ժողովուրդն Եփրեմեան եւ որ
նստէին ի Սամարիա, որ հպարտու-
թեամբ եւ ամբարտաւանութեամբ սրտից
10 խօսեցան եւ ասեն, Աղիւսք անկան,
այլ [6]եկայք վէմս տաշեսցուք. զմայրս
եւ զեղեւնափայտս հատցուք, եւ շինես-
11 ցուք մեզ աշտարակ։ Եւ կործանեսցէ
Աստուած զյարուցեալսն ի վերայ լերին
Սիոնի, եւ զթշնամիս Յուդայ ցրուեսցէ.
12 զԱսորեստան՝՝ յելիցն արեւու, եւ
[7]զՅոյնս ի մտիցն արեւու. որք ուտէին
զԻսրայէլ բերանովք ամենայն բերանովի
Ի վերայ այսր ամենայնի ոչ դարձաւ
բարկութիւն նորա, այլ տակաւին ձեռն
իւր բարձրացեալ է։
13 Եւ ժողովուրդն ոչ դարձաւ [8]մինչեւ
վիրաւորեցաւ՝՝, եւ զՏէր զօրութեանց
14 ոչ խնդրեցին։ Եւ բարձ Տէր յԻսրայելէ
զգլուխն եւ զվերջն, [9]զմեծն եւ զփոքր՝՝
15 ի միում աւուր. (Զծերն եւ զակնառուն՝
այն առաջն է, եւ զմարգարէն որ զա-
նօրէնութիւնն ուսուցանէր՝ այն վերջն է։)
16 Եւ եղիցի որ երանիցեն ժողովրդեանս
այսմիկ՝ [10]մոլորեալք եւ մոլորեցուցա-
նիցեն. որպէս զի կլանիցեն զդոսա՝՝։
17 Վասն այսորիկ ի վերայ երիտասարդաց
նոցա ոչ եղիցի ուրախ [11]Աստուած, եւ
որբոց նոցա եւ այրեաց մի՛ ողորմեսցի,
զի ամենեքին անօրէնք են եւ չարք,
եւ ամենայն բերան խօսի զանիրաւու-
թիւն։ Ի վերայ այսր ամենայնի ոչ
դարձաւ բարկութիւնն, այլ տակաւին
ձեռն իւր բարձրացեալ է։
18 Եւ վառեսցի իբրեւ զհուր անօրէնու-
թիւն, եւ [12]իբրեւ զսէզ չորացեալ այ-
րեսցի ի հրոյ՝՝. եւ վարեսցի յանտառս
մայրեաց. եւ շուրջ զամենայն բլրովք
19 նոցա հուր ճարակեսցի։ Վասն սրտմտու-
թեան բարկութեան Տեառն հրձիգ
լիցի երկիրն [2]ամենայն, եւ եղիցի ժո-
ղովուրդն այրեցեալ իբրեւ ի հրոյ. այր
20 եղբօր իւրում մի՛ ողորմեսցի։ Այլ խո-
տորեսցի յաջակողմն իւր առ քաղցի,
եւ կերիցէ զձախակողմն իւր, եւ մի՛
յագեսցի մարդ ուտելով զմարմինս բազ-
21 կաց իւրոց. Զի կերիցէ Մանասէ զԵփ-
րեմ, եւ Եփրեմ զՄանասէ, եւ ի միա-
սին պաշարեսցեն զՅուդա։ Ի վերայ
այսր ամենայնի ոչ դարձաւ բարկու-
թիւն նորա, այլ տակաւին ձեռն իւր
բարձրացեալ է։

## ԳԼ. Ժ

1 Վա՜յ այնոցիկ որ [13]գրեն զչարիս, գրե-
2 լով գրեն զչարիս իւրեանց. Խոտորեն՝՝
զդատաստանս աղքատաց, եւ զիրաւունս
անանկաց ժողովրդեան իմոյ [14]յափշտա-
կեն. զի լինիցին նոցա այրին ի յափշտա-
3 կութիւն, եւ որբն յաւար։ Եւ զի՞նչ
[15]գործեսցեն յաւուրն այցելութեան. [16]զի
նեղութիւն ձեր՝՝ ի հեռաստանէ եկեսցէ.
եւ առ ո՞ փախստեայ անկանիցիք յօգ-
նականութիւն, եւ ո՞ւր թողուցուք

---

[1] Ոմանք. Զի ամենայն սպառազինութիւն պատերազմողաց ազմկաւ և հանդերձ թաթաւեալ յարեան եղիցի յայրումն, ի ճարակ հրոյ։ [2] Յոմանս. պակասէ [3] Ոմանք. Հայր յաւիտենականութեան, Իշխան խաղաղութեան։ (7) Մեծութեան իշխանութեան [4] Ոմանք. եւ յարքայութեան նորա. հաստատել զնա և զօրացուցանել [5] Ոմանք. Պատգամ
[6] Ոմանք. մեք վէմք տաշելովք շինեսցուք. մայթ զի նիք հատան, այլ փոխեսցուք յեղեւնափայտս։ (11) Սակայն յարուցէ Տէր ի վերայ նոցա զհակառակորդս Ռասինայ եւ զթշնամիս նորա զրգռեսցէ։ (12) Արամ [7] Ոմանք. Փղշտացիք
[8] Ոմանք. առ որ հարկանէր զնա

[9] Ոմանք. զրաս արմունկնուղն և զկնիւն [10] Ոմանք. մոլորեցուցանիցեն, և որ երանինն՝ կլանիցին [11] Ոմանք. Տէր
[12] Ոմանք զսէզ և զփուշ այրեսցէ. [13] Ոմանք. սահմանեն սահմանս անօրէնութեան, եւ դպրաց որ գրեն չարիս. (2) Խոտորել [14] Ոմանք. յափշտակել
[15] Ոմանք. գործիցէք [16] Ոմանք. եւ ի նեղութեան որ

4 զփառս ձեր . [1]Եթէ ոչ մատնեսջիք ի
գերութիւն՝՝, եւ ի ներքոյ սպանելոյն
մտանիցեն ։ Ի վերայ այսր ամենայնի ոչ
դարձաւ բարկութիւն նորա , այլ տա-
կաւին ձեռն իւր բարձրացեալ է ։
5 Վա՜յ Ասորեստանւոյն , գաւազան բար-
կութեան [2]եւ սրտմտութեան իմոյ ի
6 ձեռս նոցա . Զի զբարկութիւն իմ յազգ
անօրէն արձակեցից , եւ իմում ժողո-
վրդեան կարգեցից առնել աւար եւ
զյափշտակութիւն , կոխան առնել զքա-
7 ղաքս եւ զնել զնոսա ի փոշի՝՝ Իսկ նա
ոչ այսպէս ած զմտաւ , եւ ոչ այսպէս
համարեցաւ յանձին , այլ դարձցի զմիտս
8 իւր սատակել զազգս ոչ սակաւս ։ [3]Եւ
եթէ ասիցեն ցնա , Դու միա՞յն իցես
9 իշխան ։ Ասասցէ , Ո՞չ առի զաշխարհն
որ ի վեր է քան զԲաբելոն , եւ զԽա-
ղանէ ուր աշտարակն շինեցաւ . առի եւ
զԱրաբիա , եւ զԴամասկոս եւ զՍամա-
10 րիա ։ Որպէս զնոսայն առի ձեռամբ ի-
մով , նոյնպէս առից եւ զամենայն իշ-
խանութիւնս ։ Ողբացէք . զրօշեալք, որ
11 յԵրուսաղէմ եւ ի Սամարիա . Զի՝՝ զոր
օրինակ արարի ընդ Սամարիա եւ ընդ
ձեռագործս իւր , նոյնպէս արարից ընդ
12 Երուսաղէմ եւ ընդ կուռս իւր ։ Եւ ե-
ղիցի յորժամ կատարեսցէ Տէր առնել
զամենայն ինչ ի լերին Սիոնի եւ յԵ-
րուսաղէմ, ածցէ եւ ի վերայ մեծա-
մտին բարկութիւն , ի վերայ իշխանին
Ասորեստանեայց եւ ի վերայ հպարտաց-
13 եալ փառաց աչաց նորա ։ Քանզի ասաց
թէ Զօրութեամբ [4]իմով արարից , եւ
իմաստութեամբ խորհրդոց իմոց բար-
ձից՝՝ զսահմանս ազգաց , եւ [5]առից
աւար զզօրութիւնս նոցա . [6]շարժեցից
14 զքաղաքս բնակեալս . Հասից ի վերայ
ամենայն տիեզերաց ձեռամբ իմով
իբրեւ ի վերայ բունոյ , եւ բարձից իբ-
րեւ զձուս մնացեալս . եւ ոչ ոք իցէ որ
ապրիցէ յինէն , եւ ոչ որ ընդդէմ դառ-
նայցէ ինձ , եւ բանայցէ զբերան իւր եւ
15 ճիկ հանիցէ ։ Այսպէս ասէ Տէր . Միթէ
վերանայցէ՞ փայտատ առանց փայտա-
հարի , կամ բարձրանայցէ՞ սղոց առանց
ուրուք ձգելոյ . նոյնպէս թէ զգաւազան
ոք կամ զփայտ ինչ առնուցու . նա եւ
16 ոչ այնպէս ։ Այլ առաքեսցէ Տէր զօրու-
թեանց ի պատիւ քո անարգանս, եւ ի
փառս քո հուր վառեալ բորբոքեսցի՝՝
17 Եւ եղիցի Լոյսն Իսրայելի ի հուր . եւ
[7]սրբեսցէ զնա հրով բորբոքեալ , եւ
18 կերիցէ իբրեւ զխոտ զանտառն ։ Յա-
ւուր յայնմիկ շիջցին լերինք եւ բլուրք
եւ անտառք , եւ կերիցէ ի շնչոյ մին-
չեւ ի մարմին . եւ եղիցի ապրեալն իբ-
րեւ զայն որ ապրեալն իցէ ի բորբոք-
19 եալ բոցոյ՝՝ Եւ մնացեալքն ի նոցանէ
թուով եղիցին , եւ մանուկ տղայ
գրեսցէ զնոսա ։
20 Եւ եղիցի յաւուր յայնմիկ ոչ եւս
յաւելցին մնացորդքն Իսրայելի եւ ապ-
րեալքն Յակոբայ , [8]եւ ոչ եւս ապաս-
տան լինիցին՝՝ ի զրկիչսն իւրեանց, այլ
եղիցին ապաստան [9]յԱստուած ի Սուրբն
21 Իսրայելի ճշմարտութեամբ ։ [10]Եւ եղիցին
մնացեալքն Յակոբայ յԱստուած զօ-
22 րացեալ՝՝ Եւ եթէ եղիցի ժողովուրդն
Իսրայելի իբրեւ զաւազ ծովու , սակաւ
23 ինչ մնացորդք մնասցեն ի նոցանէ . Զի
բան մի հակիրճ եւ համառօտ արդարու-
թեամբ , զբանն համառօտ արասցէ Տէր
զօրութեանց ընդ ամենայն տիեզերս ։

---

[1]Ոմ. Առանց իմ կորուսցին ի ներքոյ գերեաց
[2]Ոմ. իմոյ, և. ցուպ ի ձեռս նոցա սրտմտութիւն իմ
(6)Յազգ անօրէն արձակեցից զնա . եւ ընդդէմ
ժողովրդեան բարկութեան իմոյ հրաման տաց
նմա՝ հարկանել աւար եւ կապտել կապուտ ,
եւ առնել զնա կոխան ոտից իբրեւ զկաւ ճանա-
պարհաց ։ [3]Ոմ. Քանզի ասէ , Ո՞չ իշխանք իմ
համօրէն թագաւորք են . (9)Ո՞չ ապաքէն իբրեւ
զՔաղքամիս է Բաղանէ . ո՞չ իբրեւ զԱրփաթ՝
Եմաթ, ո՞չ ապաքէն իբրեւ զԴամասկոս՝ Սա-
մարիա ։ (10)Զոր օրինակ եգիտ ձեռն իմ զթա-
գաւորութիւնս նոցա , եւ զրօշեալք նոցա
առաւել քան զԵրուսաղէմին եւ զՍամարիայն։
(11)Ո՞չ [4]Ոմ. ձեռին իմոյ արարի և իմաստու-
թեամբ իմով . զի իմաստուն եմ . բարձի [5]Ոմ.
առի [6]Ոմ. եւ նուաճեցի որպէս հզօր զբնակ-
եալս . (14) Եւ եգիտ իբրեւ զբոյն ձեռն իմ
զմեծութիւն ազգաց, եւ որպէս որ ժողովիցէ
զձուս մնացեալս՝ զամենայն երկիր ժողովեցի,
եւ ոչ էր որ շարժէր զթեւ եւ բանայր զբերան
և ճիկ հանէր ։(15)Միթէ ճոխանայցէ՞ փայտատ
ի վերայ փայտահարի, կամ բարձրանայցէ՞ սղոց
ի վերայ որոյ շարժէն զնա . որպէս եթէ գաւա-
զան շարժէր զոր բարձրացուցանէն զնա, որպէս
եթէ հպարտանայր ցուպ թէ չիցէ փայտ ։ (16)
Վասն որոյ առաքեսցէ Տէր՝ Տէր զօրութեանց ի
պարարտս նորա ծիւրութիւն , եւ ընդ փառօք
նորա վառեսցէ հրդեհ որպէս հրդեհ հրոյ ։
[7]Ոմ. Սուրբն նորա՝ ի բոց՝, եւ այրեսցէ եւ կե-
րիցէ զփուշ նորա եւ զխոտ նորա ի միում ա-
ւուր .(18) Եւ զփառս անտառի նորա և պտղա-
բեր երկրի նորա ի շնչոյ մինչեւ ի մարմին սպա-
ռեսցէ . եւ եղիցի իբրեւ զհիւանդ (կամ, դրօ-
շակիր ) նուաղեալ ։ [8]Ոմ. ապաստան լինել
[9]Ոմ. ի Տէր [10]Ոմ. Մնացորդն, մնացորդ Յա-
կոբայ դարձցի յԱստուած հզօր ։

24 Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր՝ Տէր
զօրութեանց. Մի՛ երկնչիր, ժողո-
վուրդ իմ որ բնակեալ ես ի Սիոն՝ յԱ-
սորեստանեայց. [1]զի եթէ՝՝ հարկանիցէ
զքեզ գաւազանաւ, [2]քանզի ես ածեմ
ի վերայ քո զհարուածն, ճանաչել քեզ
25 զճանապարհն Եգիպտացւոց՝՝. Զի փոքր
մեւսեւս զայրացեալ բարկութիւնն. բայց
սրտմտութիւն իմ [3]ի վերայ խորհրդոց՝՝
26 նոցա: Եւ յարուսցէ Տէր [4]Աստուած ի
վերայ նոցա զհարուածս ըստ հարուա-
ծոցն Մադիամու [5]ի տեղւոջն չարչարա-
նաց. եւ սրտմտութիւն նորա ըստ ճա-
նապարհի ծովուն որ յերկրին Եգիպտաց-
27 ւոց՝՝: Եւ եղիցի յաւուր յայնմիկ բարձցի
[6]երկեւղ նորա ի քէն,՝՝ եւ լուծ նորա
ի պարանոցէ քումմէ, եւ խորտակեսցի
լուծն [7]յուսոց ձերոց:
28 Քանզի հասցէ ի քաղաքն Անգէ, եւ
անցցէ ի Մակեդդով, եւ՝՝ ի Մաքմաս
29 դիցէ զկազմած իւր: [8]Եւ անցցէ ընդ
ձորս, եւ հասցէ ի վերայ Գաբաւոնաց-
ւոց. ահ առցէ զՀռամա զքաղաքն Սաւ-
ւուղի. փախիցէ դուստր Գաղիմայ:
30 Ձայնիցես ձայնիւ քով. լուր լիցի ի Լայիս,
31 լուր լիցի յԱնաթովթ. Զարհուրեսցի
Մադբենա, եւ որ բնակեալ են ի Գեբիմ.
32 Մխիթարեսցի այսօր ագանել ի ճանա-
պարհին. մխիթարեսցէ ձեռամբ լեառնն
դուստր Սիոնի, եւ բլուրքն որ յԵրու-
33 սաղէմ:՝՝ Զի ահաւասիկ Տէր՝ Տէր զօ-
րութեանց [9]խռովեցուսցէ զփառաւոր-
եալսն զօրութեամբ՝՝. եւ բարձրացեալքն
ամբարտաւանութեամբ խորտակեսցին
34 եւ խոնարհեսցին: [10]Եւ անկցին բար-
ձաւնքն սրով, եւ Լիբանան բարձամբք
իւրովք կործանեսցի:՝՝

[1]Եբր. գաւազան [2]Եբր. եւ զցուպ իւր վերացուսցէ ի վերայ քո ըստ օրինակին որ յԵգիպտոս [3]Եբր. ի կործանումն [4]Եբր. զօրութեանց [5]Եբր. ի վիմին Որեբայ. եւ զգաւազան իւր ի վերայ ծովուն, եւ վերացուսցէ զնա ըստ օրինակին որ յԵգիպտոս [6]Եբր. բեռն նորա յուսոյ քումմէ [7]Եբր. առ պարարտութեան:

(28) Եկն Այեաթ, անց ի Մագրոն, [8]Եբր. Անցին ընդ անցս, ագան ի Գաբաա. երկեաւ Հռամա, Գաբաայն Սաւուղայ փախեաւ: (30) Բարձ զձայն քո, դուստր Գաղիմայ, լսեցո ի Լայիս, հէք Անաթովթ: (31) Հեռացաւ Մադմենա, բնակիչք Գեբիմայ ամրացուցին ի փախուստ. (32) Տակաւին այսօր ի Նոբ զկայ առնու. շարժեսցէ զձեռն իւր ի լեառնն դստեր Սիոնի. ի բլուրն Երուսաղեմի: [9]Եբր. հատցէ զոստսն ստեպս, [10]Եբր. Եւ հատցէ զթաւուտ անտառին երկաթով, եւ Լիբանան ի ձեռն Հզօրին անկցի:

## Գլ. ԺԱ

1 Եւ ըղխեսցէ գաւազան յարմատոյն
Յեսսեայ, եւ ելցէ [11]ծաղիկ յարմատոյ
2 անտի: Եւ հանգիցէ ի վերայ նորա Հոգի
[12]Աստուծոյ, Հոգի իմաստութեան եւ
հանճարոյ, Հոգի խորհրդոյ եւ զօրու-
թեան, Հոգի գիտութեան եւ աստուած-
3 պաշտութեան. Եւ [13]լցցէ զնա Հոգի եր-
կիւղի Աստուծոյ՝՝. ոչ ի կարծ դատեսցի,
4 եւ ոչ ըստ խօսից յանդիմանեսցէ: Այլ
արասցէ իրաւունս անանկին, եւ յան-
դիմանեսցէ [14]զխոնարհս երկրի. եւ հարցէ
զերկիր [15]բանիւ բերանոյ իւրոյ, եւ
հոգւով շրթանց իւրոց սատակեսցէ զամ-
5 պարիշտս: Եւ եղիցի արդարութիւն
ածեալ ընդ մէջ իւր, եւ ճշմարտու-
6 թեամբ պատեալ զկողս իւր: Եւ ճա-
րակեսցէ գայլ ընդ գառին, եւ ինձ առ
ուլու մակաղեսցի, եւ որթ եւ ցուլ եւ
առիւծ ի միասին ճարակեսցին, եւ մա-
7 նուկ մատաղ ածցէ զնոսա: Եզն եւ արջ
ի միասին ճարակեսցին, եւ որդեակք
նոցա խառն շրջեսցին, եւ առիւծ իբ-
8 րեւ զեզն յարդ կերիցէ: Եւ մանուկ
մատաղ [16]ի ծակ իժից, եւ ի բոյն կոր-
9 եանց իժից արկցէ զձեռն իւր[17]. Եւ ոչ
մեղիցեն եւ ոչ [18]կարասցեն հարկանել
զոք ի լերին՝՝ սրբութեան իմոյ. զի լցաւ
երկիր [1]ամենայն՝ գիտութեամբ Տեառն
իբրեւ զջուրս [1]բազումս որ ծածկեն
10 զծով: Եւ եղիցի յաւուր յայնմիկ ար-
մատն Յեսսեայ, եւ որ կանգնելոցն է՝
[19]իշխան հեթանոսաց, ի նա հեթանոսք
յուսասցին. եւ եղիցի հանգիստ նորա
11 պատուով: Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝
յաւելցէ Տէր [20]ցուցանել զձեռն իւր,
նախանձելով առնել՝՝ զմնացորդս ժողո-
վրդեան իւրոյ՝ որ մնացեալ իցեն յԱ-
սորեստանեայց եւ յԵգիպտացւոց եւ [21]ի
Բաբելացւոց եւ յԵթովպացւոց եւ յԵ-
ղամացւոց եւ [22]յելիցն արեւու եւ յԱ-
12 րաբացւոց՝՝ եւ ի կղզեաց ծովու: Եւ
բարձրացուսցէ նշան ի հեթանոսս, եւ
ժողովեսցէ [23]զկորուսեալսն Իսրայելի, եւ

[11]Եբր. շառաւիղ [12]Եբր. Տեառն [13]Եբր. բուրեսցէ եւ կիւղիւ Տեառն [14]Եբր. ուղղութեամբ վասն զրկելոց [15]Եբր. գաւազանաւ [16]Եբր. խաղասցէ ի ծակ [17]Եբր.—յետին յ—եւ—, հաւուցեալն իսաենէ [18]Եբր. ապականեսցեն յամենայն լերին [19]Եբր. ի նշան [20]Եբր. ձգել զձեռն իւր առնուլ [21]Եբր. ի Պաթուրացւոց [22]Եբր. ի Սենաարայ եւ յԵմաթայ [23]Եբր. զաքսորեալսն

զցրուեալսն Յուդայ ժողովեսցէ ի չո-
13 րից անկեանց երկրի։ Եւ բարձցի նա-
խանձն Եփրեմի, եւ թշնամիքն Յուդայ
կորիցեն. Եփրեմ ոչ նախանձեսցի ընդ
Յուդայ՝ եւ Յուդա ոչ նախանձեսցի ընդ
14 Եփրեմայ։ Եւ թռիցեն [1]նաւք այլազ-
գեաց", առցեն առ միանգամայն [2]զծո-
վակողմն եւ զարեւելեայսն եւ զԻ-
դումայեցիսն". արկցեն զձեռս իւրեանց
[3]նախ ի Մովաբ. եւ որդիքն Ամոնայ
15 յառաջագոյն հնազանդեսցին։ Եւ [4]աւերեսցէ
Տէր զծովն Եգիպտացւոց, եւ արկցէ
զձեռն իւր ի վերայ գետոյն հզօր
սաստկութեամբ, եւ հարցէ զեւթնա-
ձորն. զի համարձակ լիցի գնալ ընդ նա
16 [5]եւ աղելոյն"։ Եւ եղիցի [6]անց մնացե-
լոց ժողովրդեանն իմոյ որ յԵգիպտոս.
եւ եղիցի Իսրայէլի որպէս" յաւուրն յո-
րում ել յերկրէն Եգիպտացւոց։

## ԳԼ. ԺԲ

1 Եւ ասասցես յաւուր յայնմիկ, Օրհնե-
ցից զքեզ, Տէր, զի բարկացար ինձ,
[7]եւ դարձուցեր զսրտմտութիւն քո
2 յինէն, եւ ողորմեցար ինձ"։ Ահաւասիկ
Աստուած իմ, փրկիչ իմ [8]Տէր, եւ"
յուսացեալ եղէց ի նա՝ եւ ոչ երկեայց.
զի [9]փառք իմ եւ օրհնութիւն իմ [10]Տէր,
3 եւ եղեւ ինձ ի փրկութիւն։ Եւ
առէք ջուր ուրախութեամբ յաղբերացն
4 փրկութեան։ Եւ [11]ասասցես յաւուր
յայնմիկ, Օրհնեցէք զՏէր, հնչեցէք զա-
նուն նորա, պատմեցէք ի հեթանոսս
[12]զփառս նորա, յիշեցէք զի բարձրացաւ
5 անուն նորա։ Օրհնեցէք զանուն Տեառն
զի մեծամեծս արար, պատմեցէք զայս՝
6 ամենայն երկրի։ Ցնծացէք եւ ուրախ
լերուք բնակիչք Սիոնի, զի բարձրա-
ցաւ Սուրբն Իսրայէլի ի մէջ [13]նորա։

## ԳԼ. ԺԳ

1 Տեսիլ Բաբելացւոց, զոր ետես Եսայի
որդի Ամովսայ։
2 Ի վերայ լերինն դաշտականի առէք
նշան, բարձրացուցէք զբարբառ ձեր ի
վերայ նոցա. [14]մի՛ երկնչիք, կոչեցէք ձե-
ռամբ. բացէք, իշխանք, եւ ես տամ
3 հրաման։ Նուիրեալք են եւ ես ածից
զնոսա. գիմեալ գան սկայք յագեցու-
ցանել զսրտմտութիւն իմ. խնդան՝ գան
4 միանգամայն, եւ թշնամանեն"։ Ձայն
ազգաց բազմաց ի վերայ լերանց՝ ի
նմանութիւն ազգաց բազմաց, ձայն
թագաւորաց եւ ազանց միահամուռ ժո-
ղովելոց. Տէր զօրութեանց հրաման ետ
5 ազգաց սպառազինաց, Գալ յերկրէ հե-
ռաստանէ ի ծագաց [8]հիմանց երկնից.
հասեալ է Տէր իւրովք սպառազինօք
սատակել զամենայն աշխարհ։
6 Ողբացէք. զի մերձ է օր Տեառն, եւ բե-
7 կումն [15]յԱստուծոյ հասեալ է։ Վասն այսո-
րիկ ամենայն ձեռք լքցին, եւ ամենայն
8 [16]անձն մարդոյ դողասցէ։ Խռովեսցին
հրեշտակք, եւ" երկունք կալցին զնոսա
իբրեւ զկանանց ծննդականաց. [17]փանկայ-
ցին այր ընդ ընկերի՝ եւ զարմասցին,
եւ զդէմս իւրեանց ի բոցակերպս դար-
ձուսցեն"։
9 Զի ահաւասիկ օր Տեառն հասեալ
է անհնարին լի բարկութեամբ՝ ոխա-
կալութեամբ եւ սրտմտութեամբ, առ-
նել [18]զաշխարհս անապատ, եւ զմեղա-
10 ւորս սատակել ի նմանէ։ Զի աստեղք
երկնից՝ [19]Հայկիւն հանդերձ եւ ամենայն
զարդուն երկնից" լոյս մի՛ տացեն, եւ
խաւարեսցի արեգակն ի ծագել իւրում,
11 եւ լուսին մի՛ տացէ զլոյս իւր։ [20]Եւ
հրաման տաց ընդ ամենայն տիեզերս
զչարիս, եւ ամպարշտաց զմեղս իւ-
րեանց". եւ կորուսից զհպարտութիւն
զանօրինաց, եւ զբարձրութիւն ամ-
12 բարտաւանից խոնարհեցուցից։ [21]Եւ ե-
ղիցին մնացեալքն պատուականք առա-
ւել քան զոսկի անհուր, եւ մարդն պա-
տուական եղիցի քան զականս պատուա-

---

[1]Եբր. յուս Փղշտացւոց յարեւմուտս կոյս [2]Եբր. զարեւելեայսն [3]Եբր. յԵդովմ եւ [4]Եբր. ցամաքեցուսցէ Տէր զլեզու ծովուն [5]Եբր. կօշկօք [6]Եբր. մնացելոց ժողովրդեան նորա որ մնասցեն՝ անց ընդ Ասուր, որպէս եղեւ Իսրայէլի [7]Եբր. դարձաւ սրտմտութիւն քո յինէն, և մխիթարեցեր զիս [8]Եբր. ղ—ն—է [9]Եբր. զօրութիւն [10]Եբր. Եհովայ Տէր է [11]Եբր. ասասջիք [12]Եբր. զգործս [13]Եբր. քո

[14]Եբր. շարժեցէք զձեռն, զի երթիցեն ի դրունս իշխանաց։(3) Ես ետու հրաման նուիրելոց իմոց, կոչեցի եւս զհզօրս իմ վասն բարկութեան իմոյ, զորս խնդան ընդ բարձրութիւն իմ։ [15]Եբր. յԱմենակալէն [16]Եբր. սիրտ մարդոյ հալեսցի.(8) Զարհուրեսցին նոքա, նեղութիւն եւ անձկութիւն տիրեսցեն նոցա, [17]Եբր. պշուցեն այր ընդ ընկեր իւր. երեսք բոցոյ երեսք նոցա [18]Եբր. զերկիր [19]Եբր. եւ աստեղատունք նոցա [20]Եբր. Եւ այց արարից տիեզերաց վասն չարեաց, եւ ամպարշտաց վասն մեղաց նոցա [21]Եբր. Արարից զմարդիկ չքնաղ քան զոսկի սուրբ, եւ պա-

13 կանս Սոփերայ։ Զի երկինք զայրա-
ցին՚՚ եւ երկիր սասանեսցի ի հիմանց
իւրոց՝ վասն սրտմտութեան բարկու-
թեան Տեառն զօրութեանց, յաւուր յո-
րում հասեալ իցէ սրտմտութիւն նորա։
14 Եւ եղիցին [1]մնացեալքն իբրեւ զայծեամն
փախուցեալ, եւ իբրեւ զոչխար մոլո-
րեալ, եւ ոչ ոք իցէ որ ժողովիցէ. զի
մարդն անդրէն ի ժողովուրդ իւր դարձ-
ցի, եւ այր իւրաքանչիւր յերկիր իւր
15 հալածեսցի։ Զի որ ըմբռնեսցի՝ [2]ի պար-
տութիւն մատնեսցի, եւ ժողովեալքն՚՚
16 ի սուր անկցին։ Եւ զորդիս նոցա ա-
ռաջի նոցա սատակեսցեն, եւ զտունս
նոցա աւար հարկանիցեն, եւ զկանայս
նոցա խայտառակեսցեն։
17 Ահաւասիկ յարուցանեմ ի վերայ [3]ձեր
զՄարս՝ որ ոչ ինչ համարին զարծաթ
18 եւ [4]զոսկի։ Զաղեղունս երիտասարդաց
խորտակեսցեն, եւ որդւոցն ձերոց՚՚ մի՛
ողորմեսցին, եւ ի մանկունս [1]ձեր ոչ
19 խնայեսցէ ակն նոցա։ Եւ եղիցի Բաբե-
լոն, որ [5]փառաւորն կոչի ի թագաւո-
րէն՚՚ Քաղդէացւոց, որպէս կործանեաց
20 Աստուած զՍոդոմ եւ զԳոմոր։ Եւ ոչ
բնակեսցի յաւիտեանս ժամանակաց, եւ
[6]մի՛ մտցեն ի նա յազգս բազումս՚՚, եւ
մի՛ եւս անցցեն ընդ նա Արաբացիք,
21 եւ հովիւք մի՛ հանգիցեն ի նմա։ Այլ
անդ հանգիցեն գազանք վայրենիք, եւ
լցցին տունք նոցա [7]ողողակաւ. եւ անդ
հանգիցեն համբարուք, եւ անդ դեւք
22 կաքաւեսցեն, Եւ յուշկապարիկք [8]բնա-
կեսցեն ի նմա, եւ ոզնիք ձագս հան-
ցեն յապարանս նոցա։ Վաղվաղակի
հասեալ եւ գայ, եւ ոչ անագանեսցի.՚՚
եւ աւուրք նորա մի՛ յերկարեսցին։

ԳԼ. ԺԴ

1 [9]Եւ ողորմեսցի Տէր Յակոբայ, եւ
ընտրեսցէ միւսանգամ զԻսրայէլ. եւ
[10]հանգիցեն յերկրի իւրեանց, եւ յաւել-
ցի պանդուխտն [11]ի տունն Յակոբայ։
2 Ընկալցին զնոսա հեթանոսք, եւ ած-
ցեն ի տեղիս իւրեանց եւ [12]ժառանգես-
ցեն, եւ բազմասցին յերկրին Աստու-
ծոյ՚՚ ի ծառայս եւ յաղախնայս. եւ ե-
ղիցին գերիք գերեվարողք նոցա, եւ անկ-
ցին ի ծառայութիւն որ տիրէին նոցա։
3 Եւ եղիցի յաւուր յայնմիկ, հանգուսցէ
զքեզ Տէր ի ցաւոց եւ ի սրտմտութե-
նէ քումմէ, եւ ի ծառայութենէ խստու-
4 թեան զոր ծառայեցեր նոցա, Եւ առցես
զողբս զայս ի վերայ թագաւորին Բաբե-
լոնացւոց, եւ ասասցես [1]յաւուր յայնմիկ՚՚,
Զիա՞րդ դադարեաց կալ պահանջողն, հանգ-
5 եաւ [13]ստահակողն։ Զի խորտակեաց Տէր
[14]զլուծ մեղաւորացն՝ զլուծ իշխանացն.
6 Սատակեաց զազգս սրտմտութեամբ,
անհնարին հարուածովք բարկութեամբ
7 յանխնայ։ Հանգեաւ յուսով՚՚ երկիր ամե-
8 նայն, եւ զոչէ ուրախութեամբ։ Եւ
[15]փայտքն Լիբանանու՚՚ ամենայն եղեն քեզ,
եւ մայրքն Լիբանանու ասեն, թէ Յորմէ
հետէ դու դադարեցեր՝ ոչ ելին ի մեզ փայ-
9 տահարք։ Դժոխք ի ներքուստ [16]դառնացան
ի պատահել քեզ. կանգնեցան միանգա-
մայն հսկայքն ամենայն որ լեալ էին իշ-
խանք երկրի, որ յարուցին՚՚ յաթոռոց իւ-
10 րեանց զամենայն թագաւորս ազգաց։ Ամե-
նեքեան պատասխանի տացեն քեզ եւ
ասասցեն, Եւ դո՞ւ իբրեւ զմեզ ըմբռնե-
11 ցար, եւ ընդ մեզ համարեցար։ Իջին ի
դժոխս փառք քո, եւ բազում ուրա-
խութիւնն քո. ի ներքոյ քո մէջս տա-
րածեսցեն, եւ ի վերայ քո որդն յարկ-
12 ցի։ [17]Զիա՞րդ անկաւ յերկնից Արուսեակն
որ ընդ առաւօտն ծագէր. անկաւ յեր-
կիր, խորտակեցաւ՝ որ առաքէր առ ա-
13 մենայն ազգս՚՚ Դու ասէիր ի միտ քում,
Ելից յերկինս, ի վերայ քան զաստեղս
[18]երկնից արկից՚՚ զաթոռ իմ. նստայց ի

տուական քան զոսկին Ոփիրայ։ (13) Վասն որոյ եւ սարսեցից զերկինս. [1]Եբր. պակաս [2]Եբր. խոցեսցի, եւ զորս ունիցին՝ [3]Եբր. Նոցա [4]Եբր. ոչ հաճին ընդ ոսկի։ (18) Աղեղունք նոցա զերիտասարդս խոցոտեսցեն, եւ պտղոյ որովայնի [5]Եբր. փառքն է թագաւորութեանց, պարծանք հպարտութեան [6]Եբր. ոչ բնակեսցի ազգէ յազգ [7]Եբր. անասնովք ռնգացելովք [8]Եբր. ճիչ բարձցեն յապարանս նորա, եւ վիշապք ի տաճարս փափկութեան։ Ժամանակ նորա հասեալ կայ [9]Եբր. Զի [10]Եբր. հանգուսցէ զնոսա

[11]Եբր. ի նոսա, եւ յարեսցին ի տունն [12]Եբր. ժառանգեսցէ զնոսա տունն Իսրայէլի յերկրին Տեառն [13]Եբր. հարկահանն [14]Եբր. զգաւազ ամպարշտացն, զգաւազան իշխանացն. (6) Որ հարկանէրն զազգս սրտմտութեամբ, հարուածովք անդադար, իշխէր բարկութեամբ ազգաց, հալածանս կրէ անարգել։ (7) Հանգեաւ, ողի առ [15]Եբր. եղեւնափայտք [16]Եբր. դղրդեցան վասն քո, յելանելն ընդ առաջ գալստեան քո. զարթոյց ի վերայ քո զՀսկայս, զամենայն իշխանս երկրի. յարոյց [17]Եբր. Զիա՞րդ անկար յերկնից, Արուսեակդ, որդի առաւօտուն. կործանեցար յերկիր որ ճնշանէիր ի վերայ ազգաց։ [18]Եբր. Աստուծոյ բարձրացուցից

լերինն ¹բարձու, ի վերայ լերանց բար-
14 ձանց` հիւսիսոյ. Ելից ի վեր քան զամպս,
15 եղէց նմանօղ Բարձրելոյն։ Արդ անդ-
ւանդիկ ի դժոխս իջցես ²եւ ի հիմունս
16 երկրի`։ Որք տեսանիցեն զքեզ` զար-
մասցին ի վերայ քո եւ ասասցեն, Այս
այն այր է որ զայրացուցանէր զերկիր,
17 շարժէր զթագաւորս. Որ առնէր զա-
մենայն տիեզերս աւերակ, եւ քակէր
զքաղաքս նոցա. զգերեալս զերծ ոչ
18 արար։ Ամենայն թագաւորք ազգաց
ննջեցին պատուով` այր իւրաքանչիւր
19 ի տան իւրում. Եւ դու ³անկցիս ի վե-
րայ լերանց իբրեւ զմեռեալ, զազրելի
ի մէջ բազում զխառնից կոտորելոց սրով`
իջելոց ի դժոխս. իբրեւ զձորձս արեամբ
20 թաթաւեալ որ ոչ լիցէ սուրբ. Նոյնպէս
եւ դու ոչ սրբեսցիս`, զի ապականեցեր
զերկիր ⁴իմ, եւ զժողովուրդ ⁴իմ կո-
տորեցեր. մի՛ մնասցէ յաւիտեան ժա-
21 մանակաց զաւակ ⁵չար։ Պատրաստեա
զորդիս քո ի` սպանումն վասն մեղաց
հարց իւրեանց. զի մի՛ յարիցեն եւ ժա-
ռանգեսցեն զերկիր, եւ լցցեն զերկիր
22 ⁶պատերազմօք։ Յարեայց ի վերայ նո-
ցա, ասէ Տէր Սաբաովթ, եւ կորու-
սից ⁷զանուն նոցա եւ զզարմ եւ զզաւակ։
23 Այսպէս ասէ Տէր զօրութեանց. Արարից
զԲաբելոն աւերակ, զի բնակեսցեն ի
նմա ոզնիք. եւ եղիցի յոչինչ, եւ ա-
րարից զնա խորխորատ տղմոյ ի կորուստ·
24 Այսպէս ասէ Տէր զօրութեանց.
Զոր օրինակ ասացի` այնպէս եղիցի,
եւ որպէս խորհեցայ իմ` այն կացցէ.
25 Սատակել զԱսորեստանեայս յերկրի
իմում եւ ի վերայ լերանց իմոց եւ եղի-
ցին ի կոխումն. եւ բարձցի ⁸ի ձէնջ
լուծ նոցա, եւ զառապարութիւն նոցա ի
26 պարանոցէ ձերմէ` վերասցի։ Այս խոր-
հուրդ է զոր խորհեցաւ Տէր ի վերայ
ամենայն տիեզերաց. եւ այս ձեռն
բարձրացեալ ի վերայ ամենայն ազգաց։
27 Զի զոր ⁹սուրբն Աստուած` խորհեցաւ,
ո՞վ իցէ որ զայն ցրիցէ. եւ զբարձրացեալ
ձեռն նորա` ո՞վ իցէ որ դարձուցանիցէ։
28 Յամին յորում մեռաւ Աքազ արքայ,
եղեւ պատգամս այս ¹⁰ի վերայ այլազ-
գեաց։`
29 Մի՛ ուրախ լինիք, ամենայն այլազ-
գիք, թէ խորտակեցաւ լուծ հարկանո-
ղացն ձերոց. զի ի զաւակէ օձին ելցեն
ծնունդք իժից, եւ ի նոցա ծննդոց ել-
30 ցեն օձք թեւաւորք։ Եւ բուծցին ¹¹աղ-
քատք նովաւ, եւ աղքատ մարդիկ` ի խա-
ղաղութեան բնակեսցեն. եւ ¹²սատա-
կեսցէ ի սովոյ զզաւակ քո, եւ զմնացորդս
31 քո սատակեսցէ։ ¹³Աղաղակեցէք, գոչեցէք քա-
ղաքաց. ձայնս արկցեն, քաղաքք խռով-
եալք, ամենայն այլազգիք. ծուխ եկ ի
32 հիւսիսոյ, եւ ոչ եւս գոյանիցի`։ Եւ զի՞նչ
տացեն պատասխանի ¹⁴թագաւորք ազ-
գաց. զի Տէր հաստատեաց զհիմունս
Սիոնի, եւ ¹⁵նովաւ փրկեսցին խոնարհք
ժողովրդեանն`։

## ԳԼ. ԺԵ

1 Պատգամ ի վերայ Մովաբացւոց։
¹⁶Գիշերի սատակեսցի Մովաբացին,
գիշերի կործանեսցի պարիսպ Մովաբաց-
2 ւոյն։ Սուգ առէք յանձինս, զի կորեաւ
Գեղեբոնն` տեղի մեհենին ձերոյ. անդր
ելանիցէք լալ ի Նաբաւ Մովաբացւոց։
Ողբացէք` զի ամենայն գլուխ ի կնդու-
թիւն, եւ ամենայն բազուկք խորտա-
3 կեալք`։ Ի հրապարակս նորա քուրձ
զգեցարուք, եւ ի վերայ տանեաց նորա
կոծեցարուք, եւ ի փողոցս նորա ամե-
4 նեքեան ողբացէք լալով։ Զի գոչեաց
Եսեբոն, եւ Եղէաղէ. մինչեւ Յասսա
լսելի եղեն ձայնք նոցա. վասն այսո-

¹Օրին. ժողովոյ, առընթեր ²Օրին. յունջ անդր գբոյ ³Օրին. ընկեսցիս ի գերեզմանէ իբրեւ ոստ զարշելի, ձորձ սպանելոց, խոցելոց սրով, իջելոց ի քարինս գբոյ իբրեւ դի ոտնակոխ։ (20) Մի՛ միասցիս ընդ նոսա ի թաղման ⁴Օրին. քո ⁵Օրին. չարաց։ (21) Պատրաստեցէք որդւոց նորա ⁶Օրին. քաղաքօք. Յոյ. թշնամեօք ⁷Օրին. ի Բաբելոնէ զանուն եւ զզարմ եւ զորդի և զթոռն, ասէ Տէր. (23) Եւ եդից զնա ի բնակութիւն ոզնեաց եւ ի ճահիճս ջուրց. եւ ածից նմա աւել աւերման ջնջման, ասէ Տէր զօրութեանց։ (24) Երդուաւ Տէր զօրութեանց, եւ ասէ, Զորօրինակ խորհեցայ ⁸Օրին. ի նոցանէ լուծ նորա, եւ բեռն նորա յուսոյ նոցա

⁹Օրին. Տէր զօրութեանց ¹⁰Յոյ. գ-լ-ս-ն ¹¹Օրին. անդրանիկք աղքատաց, եւ մուրացիկք ¹²Օրին. կորուսից ¹³Օրին. Ողբա, դուռն. ձայն բարձ, քաղաք. հալեցարուք դուք ամենայն այլազգիք. զի ծուխ եկ ի հիւսիսոյ, և մի՛ գոցի փախստեայ ի զօրս նորա։ ¹⁴Օրին. դեսպանաց ¹⁵Օրին. ի նա ապաւինեսցին նեղեալք ժողովրդեան նորա ¹⁶Օրին. Զի գիշերի կործանեցաւ, հարաւ Արն Մովաբու. զի գիշերի կործանեցաւ հարաւ քաղաքն Մովաբու։ (2) Ել ի տաճարն եւ ի Դեբոն, ի բարձունս ի կոծ. ի վերայ Նաբաւայ եւ ի վերայ Մեդաբայ ողբս առցէ Մովաբ. յամենայն գլուխս կնդութիւն, ամենայն մօրուք հատեալք։

րիկ ¹երկար Մովաբացւոյն գոչէ, եւ
5 անձն իւր ծանիցէ. Սիրտ Մովաբացւոյն
գոչէ յանձն իւր մինչեւ ի Սեգովր, քան-
զի երինջ երեմեան է՞. եւ ընդ ելսն
Ղուիթայ լալով ²ելցեն առ քեզ ի ճա-
նապարհին Արոնիիմ, գոչէ բեկումն եւ
6 շարժումն. Ջուրն Նեմերիմայ ապակա-
նեսցէ եւ ցամաքեսցի. եւ խոտ նորա
նուազեսցէ, եւ դեղ դալար անդ մի՛
գտցի. Մի՛թէ եւ այնպէս ապրեցի՞ց ինչ.
7 Քանզի ածից ի վերայ ձորոյ զԱրաբա-
8 ցիս, եւ առցին զնա. Զի կցեցաւ բո-
ղոք սահմանաց Մովաբացւոյն ընդ բո-
ղոքս Գաղիմացւոյն, եւ՞ ողբումն նորա,
մինչեւ ի ջրհորն Եղիմ՝ ողբումն նորա։
9 ³Եւ ջուրն Ռեմմոնայ լցցի արեամբ. զի
ածից ի վերայ Ռեմմոնայ զԱրաբացիս,
եւ բարձից զզաւակն Մովաբու, եւ
զԱրիէլ, եւ զմնացորդն Ադամայ, ա-
ռաքեցից իբրեւ սողունս ընդ երկիր։՞

ԳԼ. ԺԶ

1 ⁴Մ՛իթէ ապառաժ աւերակ իցէ լեառն
2 դստեր Սիոնի։ Եւ եղիցիս իբրեւ հաւու
թռուցելոյ ձագ մնացեալ, դուստր Մո-
3 վաբացւոց։ Բայց ապա եւ դու, Առ-
նոն, աւելի ինչ խորհեաց առնել յարկս
ազոյն նոցա. հովանապաղ ի միջօրէի իբ-
4 րեւ ընդ խաւար փախիցեն. Զարհուրե-
ցան, եւ ոչ վարեսցիս. զի պանդխտես-
ցին առ քեզ փախստականքն Մովա-
բու. եւ եղիցին ձեզ ապաւէն յերեսաց
հալածչի. զի բարձաւ ընկեր մարտին
քո, եւ իշխանն կորեաւ որ կոխէր զեր-
5 կիր՞ Եւ ուղղեսցի ողորմութեամբ ա-
թոռ, եւ նստցի ի վերայ նորա ⁵ճշմար-
տութեամբ ի յարկսն Դաւթի. դատես-
ցի եւ խնդրեսցէ զիրաւունս, եւ փու-
թասցի առնել զարդարութիւն։
6 Լուաք զամբարտաւանութիւնն Մո-
վաբու, զի հպարտացեալ էր յոյժ.
⁶հպարտութիւն նորա եւ ոխակալութիւն,
եւ ամբարտաւանութիւնն քո բարձցի ի
7 քէն։ Ոչ այնպէս որպէս գիւթութիւնն
քո, եւ ոչ այնպէս որպէս ողբանն
ի Մովաբ. զի ի Մովաբ ողբասցեն
ամենեքեան զաշխարհն՝ որ բնակեալն
են ի Դեսեթ. մոմնջեսցես եւ ոչ ամա-
8 չեսցես։ Դաշտքն Եսեբոնայ սուգ
առցեն, եւ այգիքն Սեբիմայ որ կլա-
նէին զազգս. կոխեցէք զայգիս նորա
մինչեւ Յազեր՝ եւ մի՛ հասջիք. մոլո-
րեցայք յանապատի. առաքեալք նորա
9 լքան, քանզի անցին ընդ ծովն։ Վասն
այսորիկ լացից իբրեւ զլալիւնն Յազե-
րայ զայգիս Սեբիմայ, զծառատունկն
քո կատարեաց Եսեբոն եւ Եղէլա. զի
զհունձս քո եւ զկութս քո կոխեցից,
10 եւ ամենեքեան կործանեսցին՞ Եւ բարձցի
ուրախութիւն եւ ցնծութիւն ⁷յայգեաց,
եւ յայգեստանի քում ուրախութիւն մի՛
լիցի՞. եւ մի՛ կոխեսցեն զգինի ի հնծանս քո
11 ⁸քանզի պակասեաց՞։ Վասն այսորիկ որո-
վայն իմ ի վերայ Մովաբու իբրեւ զքնար
հնչեսցէ, եւ ⁹զփոր իմ իբրեւ զպարիսպ
12 նորոգեցեր։ Եւ եղիցի քեզ այն յամօթ.
զի աշխատեցաւ Մովաբ ի մեհեանս իւր,

¹Եբր. ապառաժէնք Մովաբացւոյն զաղաղակ բարձցեն. անձն նորա ճչեսցէ ի նմա։ (5) Սիրտ իմ աղաղակէ վասն Մովաբու, փախստականք նորա մինչեւ ի Սեգովր իբրեւ երինջ երեմեան. ²Եբր. ելցեն. զի ի ճանապարհին Որոնայիմայ զաղաղակ բեկման յարուսցեն. (6) Զի ջուրն Նեմերիմայ եղիցի յամայութիւն, զի ցամաքեսցի խոտ, նուաղեսցէ բանջար, դեղ դալար մի՛ գտցի։ (7) Վասնորոյ մեծութիւնս զոր արարին, եւ աւանդք իւրեանց տարցին ի ձորն ուռեաց։ (8) Զի շուրջ պատեաց աղաղակ զսահմանօքն Մովաբու. մինչեւ ցԵգղայիմ ³Եբր. Զի ջուրն Դեմոնայ լցցի արեամբ, քանզի եդից ի վերայ Դեմոնայ զաւելին. ի վերայ ապրելոցն Մովաբու եւ ի վերայ մնացորդաց երկրին առեւծ։ ⁴Եբր. Առաքեցէք զգառնն առ իշխան երկրին, ի Վիմէն ընդ անապատն ի լեառնն դստեր Սիոնի։ (2) Եւ եղիցի որպէս հաւ որ մոլորեցի արձակեալ ի բունոյ, այնպէս եղիցին դստերք Մովաբու ի հունսն Առնոնայ։ (3) Մուտ ի խորհուրդ. արա իրաւունս, դիր իբրեւ զգիշեր զստուեր քո ի միջօրէի. թաքո զվերժեալսն, զվտարանդին մի՛ հանցես ի վեր։ (4) Բնակեսցեն ի քեզ աքսորեալք իմ, Մովաբ, եղիցիս ապաւէն նոցա յերեսաց հալածչի. զի բարձաւ բռնաւորն, պակասեաց աւերումն, սպառեցան յերկրէ որ կոխէին զանէին։

⁵Եբր. դատաւոր ճշմարտութեամբ ⁶Եբր. զհպարտութիւն նորա, եւ զամբարտաւանութիւն նորա, եւ զսրտմտութիւն նորա. չեն ուղիղ պարծանք նորա։ (7) Վասն այսորիկ ողբասցէ Մովաբ վասն Մովաբու, ամենեքին ողբասցեն. վասն հիմանցն Կիրհարեսեթայ հեծեծիք. արդարեւ հարեալք են։ (8) Զի դաշտք Եսեբոնայ, որթք իսկ Սեբիմայ նուաղեցան. իշխանք ազգաց խորտակեցին զընտիր ընտիր որթս նորա, մինչեւ ի Յազեր հասին. մոլորեցան յանապատին. բարունակք նորա տարածեցան, անցին ընդ ծով։ (9) Վասն այնորիկ լացից իբրեւ զլալիւնն Յազերայ զայգիս Սեբիմայ. ոռոգեցից զքեզ արտասուօք իմովք, Եսեբոն, եւ Եղէաղէ. զի ի վերայ կթոց քոց եւ ի վերայ հնձոց քոց դադարեաց խրախոյս։ ⁷Եբր. յանդոց պտղաբերաց, եւ յայգեստանս ոչ երգեսցեն, ոչ խնդասցին ⁸Եբր. դադարեցուցի զխրախոյս ⁹Եբր. փոր իմ ի վերայ Կիրհարեսեթայ։ (12) Եւ ե-

եւ մտցէ աղօթել ի ձեռագործս իւր,
եւ մի՛ կարասցէ փրկել զնա։
13 Այս բան է զոր խօսեցաւ Տէր եր-
14 բեմն ի վերայ Մովաբու. Եւ այժմ դար-
ձեալ խօսեցաւ եւ ասէ, Յերիս ամս
ըստ ամաց վարձկանի անարգեսցին
փառքն Մովաբու յամենայն ի բազում
մեծութեան իւրում, եւ մնասցէ սա-
կաւուր եւ ոչ պատուական։

## Գլ. ԺԷ.

1 Պատգամ ի վերայ Դամասկոսի։
Ահաւասիկ Դամասկոս բարձցի ի քա-
2 ղաքաց, եւ եղիցի ի կործանումն. [1]Լքեալ
յաւիտեան ի մակաղատեղս հօտից եւ ի
հանգստեան անդեոց, եւ ոչ ոք իցէ որ
3 հալածիցէ։ Եւ ոչ եւս եղիցի ամուր ա-
պաստանի Եփրեմի, եւ ոչ եւս կայցէ
թագաւորութիւն ի Դամասկոս, եւ ոչ
մնասցեն մնացորդք Ասորւոց. [2]զի ոչ
դու լաւ ես քան զորդիսն Իսրայելի եւ
զփառս նոցա. այսպէս ասէ Տէր զօ-
4 րութեանց։ Եղիցի յաւուր յայնմիկ պա-
կասութիւն փառացն Յակոբայ եւ [3]յա-
ճախութիւն փառաց նորա շարժեսցի։
5 Եւ եղիցի որպէս ոք զի ժողովէ որայ
կանգուն ի գիրկս իւր, եւ չքթիցի հաս-
կաքաղ զկնի նորա. եւ եղիցի որպէս
քաղիցէ ոք հասկ ի ձորն [4]հաստատու-
6 թեան, Եւ մնասցէ ի նմա խաղողն. եւ
կամ իբրեւ զպտուղս ձիթենւոյ երկուս
կամ երիս ի բարձրութեան ծայրիցն,
կամ չորք կամ հինգ [5]յոստոյն մնասցեն.
այսպէս ասէ Տէր Աստուած Իսրայելի։
7 Յաւուր յայնմիկ յուսացեալ լիցի մարդն
յԱրարիչ իւր, եւ աչք նորա ի Սուրբն
8 Իսրայելի հայեսցին։ Եւ մի՛ եւս յուսա-
ցեալ եղիցին ի մեհեանս, [6]եւ մի՛ ի գործս
ձեռաց իւրեանց [7]զոր արարին մատունք
նոցա, այլ եղիցին յուսացեալ ի Սուրբն
Իսրայելի, եւ ոչ եւս հայեսցին յանտառս
իւրեանց, եւ ոչ ի զարշելիսն իւրեանց։
9 Յաւուր յայնմիկ եղիցին քաղաքք [8]քո
լքեալք, զոր օրինակ լքան Ամովրհա-
ցիքն եւ Խեւացիքն՝ յերեսաց որդւոցն
10 Իսրայելի, եւ եղիցին աւերակք. Փո-
խանակ զի թողեր զԱստուած փրկիչ
քո, եւ [9]զՏէր զօրնական՝ քո ոչ յիշե-
ցեր, վասն այսորիկ տնկեսցես [10]տունկ
անհաւատ եւ սերմն անհաւատ. յաւուր
11 յորում տնկեսցես՝ մոլորեսցես։ Ընդ ա-
ռաւօտս եթէ սերմանեսցես, ծաղկեսցէ
յամառն. յաւուր յորում ժառանգեսցես ա-
ցես՝ որպէս հայր զի թողուցու զժա-
ռանգութիւն որդւոց իւրոց։
12 Վա՜յ բազմութեան ազգաց բազմաց.
իբրեւ զծով ալեօք կուտակեալ այնպէս
[11]խռովեսջիք, եւ մկանունք ազգաց
13 բազմաց իբրեւ զջուր գոչեսցեն։ Իբրեւ
զջուրս բազումս ազգք բազում, իբրեւ
ջուրց բազմաց բռնութիւն հասանից.
եւ վանեսցէ զնոսա եւ բացուստ ի բաց
հալածեսցէ. իբրեւ զփոշի յարդի հո-
սեալ յերեսաց հողմոց, եւ իբրեւ զփոշի
14 անուոյ ի փոթորկէ մրրկեալ։ Ընդ երե-
կոյս սուգ տացեն. յառաջ քան զառա-
ւօտն եւ այլ ոչ եւս իցեն. այս է բա-
ժին աւարառուացն [12]ձերոց, եւ ժառան-
գութիւն որ զձեզն ժառանգէին։

## Գլ. ԺԸ.

1 Վա՜յ երկրին ի թեւս նաւացն յայնկոյս
2 գետոյն Եթովպացւոց։ Որ առաքէր [13]պա-
տարագս ընդ ծով, [14]եւ թղթս մա-
գաղաթեայս՝ ի վերայ ջուրցն մկանանց.
[15]զի երթիցեն՝ հրեշտակք երագունք յազգ
[16]հպարտացեալ, յազգ օտար եւ ի չար.
զի ոչ եւս ոք իցէ քան զնա անդր,
3 յազգ անյոյս եւ ի կոխեալ։ Եւ այժմ

---

զիցի յորժամ երեւեսցի եթէ աշխատ եղեւ Մովաբ ի բարձունս եւ եմուտ ի մեհեան իւր կալ յաղօթս, ոչինչ օգնեսցի։ [1]Օրին. Եւ զգեք Արոյերայ լքեալք, եղիցին վասն հօտից. մակաղեսցին [2]Օրին. եղիցին իբրեւ զփառս որդւոցն Իսրայելի, [3]Օրին. զիւրութիւն մարմնոյ նորա նուաղեսցի։ (5) Եւ եղիցի որպէս որ հնձէ որայ կանգուն, և ժողովէ հասկս ի գիրկս իւր [4]Օրին. Ռափայնոց. (6) Եւ մնասցէ ի նմա ճիռ, որպէս ի թօթափել [5]Օրին. յատամն պտղաբերս [6]Յօրին. [illegible] [7]Օրին. եւ յորս արարին մատունք իւրեանց, մի՛ հայեսցին յԱստարովթս եւ ի պատկերս արեգական։

[8]Օրին. ամրութեան նորա իբրեւ լքեալս մացառաց եւ ոստոց բարձանց որ թողան [9]Օրին. զՎէմն զօրութեան [10]Օրին. տունկս հաճոյականս եւ սերմանեսցես սերմն օտար ի նմա։ (11) Ի տունջեան զտունկ քո անկցուսցես, եւ յառաւօտուն զսերմն քո բուսուսցես. սակայն հունձքն հանցին ի բաց յաւուրն ժառանգութեան և եղիցի տրտմութիւն անհնարին։ [11]Օրին. խռովին. եւ գոչիւն ազգաց իբրեւ զգոչիւն ջուրց բազմաց գոչեսցէ։ (13) Ազգք իբրեւ զգոչիւն ջուրց բազմաց գոչեսցեն. սակայն սաստեսցէ նոցա և բացուստ ի բաց հալածեսցին իբրեւ զփոշի լերանց [12]Օրին. մերոց. և վիճակ որոց կողոպտեն զմեզ [13]Օրին. դեսպանս [14]Օրին. ի նաւս պրտուեղէնս [15]Օրին. երթայք [16]Օրին. երկայնահասակ և լերկ, յազգ ահեղ ի վաղուց եւ անդր. յազգ հզօր եւ կոխոտիչ զորոյ բաժանեն գետք զերկիր նորա։ (3) Ամենայն բնա-

զնա՛ք ամենայն երկրին իբրեւ զաշխարհ
բնակեալ. բնակեսցէ աշխարհ նոցա՝ իբ-
րեւ գնշան ի լեռնէ բարձրի, եւ իբրեւ
4 զձայն փողոյ լսելի եղիցի՝։ Զի այսպէս
ասաց ցիս Տէր. [1]Զգուշութիւն եղիցի
յիմում քաղաքի՝ իբրեւ զլոյս տօթա-
գին ի միջօրէի, եւ իբրեւ զամպ ցօղա-
5 գին յաւուր ամարայնոյ։ Յառաջ քան
զհունձս՝ յորժամ բովանդակեսցի ծա-
ղիկն, եւ ազոխն [2]ծաղկեսցէ ծաղիկն
ազոխացեալ՝. եւ հատանիցէ զմանր
մանր ողկուզացն մանգաղաւ, եւ զուռն
6 կտրիցէ եւ ի բաց հատանիցէ։ Եւ թո-
ղուցու միանգամայն թռչնոց [3]երկնից
եւ գազանաց երկրի. եւ [4]ժողովեսցին
ի վերայ նոցա թռչունք երկնից, եւ ա-
մենայն գազանք երկրի [5]հասանիցեն ի
7 վերայ նոցա։ Ի ժամանակի յայնմիկ
մատուցցին պատարագք Տեառն զօրու-
թեանց [6]ի նեղեալ եւ ի խոնարհ ժո-
ղովրդենէ, եւ ի մեծէ ժողովրդենէ
յայնմհետէ եւ յաւիտեանս ժամանակաց.
ազգ յուսացեալ եւ կոխեալ՝ որ է ի
կողմն գետոյ աշխարհի նորա,՝ ի տեղ-
ւոջ ուր անուն Տեառն զօրութեանց
կոչեցաւ ի վերայ լերինն Սիոնի։

Գլ. ԺԹ

1 Տեսիլ Եգիպտացւոց։
Ահաւասիկ Տէր նստեալ ի վերայ թեթեւ
ամպոյ՝ եկեսցէ յԵգիպտոս, եւ շարժեսցին
ձեռագործք Եգիպտացւոց յերեսաց նորա,
2 եւ սիրտք նոցա լքցին ի նոսա։ Եւ [7]յարի-
ցեն Եգիպտացիքն՝ ի վերայ Եգիպտաց-
ւոցն, եւ տացեն պատերազմ այր ընդ
եղբօր եւ այր ընդ ընկերի, քաղաք ընդ
3 քաղաքի եւ [8]օրէնք ընդ օրէնս՝։ Եւ
խռովեսցին ոգիք Եգիպտացւոցն յան-
ձինս իւրեանց, եւ զխորհուրդ նոցա
ցրեցից. եւ հարցանիցեն զդիս իւրեանց
եւ զպատկերս իւրեանց, եւ զգէտնա-
4 հոչս եւ զվհուկս։ Եւ մատնեցից զԵ-
գիպտացիս ի ձեռս արանց տերանց
խստասրտաց, եւ [9]թագաւորք խիստք
տիրեսցեն՝ նոցա, այսպէս ասէ Տէր
5 [10]Սաբաւովթ։ Եւ [11]արբցեն Եգիպտացիքն
զջրչեղջն ծովափնեայս, քանզի՝ գետն
6 նուազեսցէ եւ ցամաքեսցի։ [12]Եւ պա-
կասեսցեն գետքն եւ ջրադարձք գե-
տոյն, եւ ցամաքեսցին ամենայն ժո-
ղովք ջուրցն, եւ յամենայն մարգագե-
տինս եւ յամենայն ամուրս եղեգան եւ
7 պրտուոյ եւ ի լօռամարգս՝ Ամենայն
կանաչ որ շուրջ զգետովն իցէ, եւ ամե-
նայն արտավարք որ [13]ընդ գետոյն ջրով՝
վարեալ իցեն՝ խորշակահար ցամաքես-
8 ցին։ Եւ տրտմեսցին ձկնորսքն, եւ յո-
գոց հանիցեն ամենայն կարթընկէցք
գետոյն, եւ ցանցորդքն [14]եւ ուռկանա-
9 ւորքն՝ սուգ առցեն։ Ամաչեսցեն եւ
կտաւագործքն բարակամանք, եւ որ
10 գործեն զբեհեզն։ Եւ եղիցին ճարտարքն
ամենայն ի տրտմութեան, եւ ամե-
նայն տարապարտ գործք նոցա տրտմեսցին,
11 [15]եւ ցաւեսցին սիրտք իւրեանց։ Եւ
յիմարեսցին՝ իշխանքն Տանեայ, իմաս-
տունք խորհրդականք [16]թագաւորին, եւ
յիմարեսցին խորհուրդք նոցա. զիա՞րդ
ասիցէք ցարքայն՝ թէ Որդիք իմաստ-
նոց եմք մեք, եւ որդիք թագաւորաց
12 որ ի սկզբանէն էին։ Արդ ո՞ւր են ի-
մաստունքն քո. պատմեսցեն քեզ եւ
ասասցեն՝ զինչ խորհուրդ խորհեցաւ
Տէր զօրութեանց ի վերայ Եգիպտոսի։
13 Յիմարեցան իշխանք Տանեայ, եւ
[17]բարձրացան իշխանքն Մեմփացւոց, եւ
[18]մոլորեցուցին զԵգիպտացիս ըստ ազ-
14 գաց ազգաց իւրեանց՝։ Քանզի Տէր
խառնեաց նոցա ոգի մոլորութեան, եւ
մոլորեցուցին զԵգիպտոս յամենայն գործս
իւրեանց, որպէս մոլորիցի արբեալ որ
15 փսխիցէ։ Եւ մի՛ եւս եղիցի Եգիպտաց-
ւոցն գործ՝ [19]մի՛ յետս եւ մի՛ յառաջ, մի՛
16 ի սկզբանն եւ մի՛ ի կատարածի՝։ Յաւուր

կիչք աշխարհի եւ որ բնակէք յերկրի. ի փողփողել դրօշուց ի լերինս՝ հայեցարուք, եւ ի հնչել փողոյ՝ լուարուք։ [1]Եբր. Հանգեայց եւ դէտ ակն կալայց ի տեղւոջէ իմմէ [2]Եբր. ատոքացեալ եղիցի խաղող [3]Եբր. լերանց [4]Եբր. ամառնասցեն զամառն [5]Եբր. ձմերեսցեն [6]Եբր. յերկայնահասակ եւ ի լերկ ժողովրդենէ, եւ յահեղ ազգէ ի վաղուց եւ անդր, ազգ հզօր եւ կոխոտիչ զորոյ բաժանեն գետք զերկիր նորա [7]Եբր. յարուցից զԵգիպտացիս [8]Եբր. թագաւորութիւն ընդ թագաւորութեան

[9]Եբր. թագաւոր խիստ տիրեսցէ [10]Եբր. Եհովայ Սաբաւովթ [11]Եբր. պակասեսցեն ջուրք ի ծովէ, եւ [12]Եբր. Եւ նեխեսցին գետքն, նուազեսցին եւ ցամաքեսցին ջրադարձք Եգիպտոսի, եղէգն եւ պրտուն զօսասցին։ [13]Եբր. շուրջ զգետովն [14]Եբր. ի վերայ ջուրց [15]Եբր. (11) Արդարեւ յիմարք են [16]Եբր. Փարաւոնի՝ անհանճարք վի՞րդ ասիցէք ցՓարաւոն [17]Եբր. խաբեցան [18]Եբր. մոլորեցուցին զԵգիպտոս գլխաւորք ցեղից նորա [19]Եբր. որ առնիցէ, գլուխ և ագի, ոստ արմաւենւոյ և կնիւն

յայնմիկ եղիցին Եգիպտացիք իբրեւ զկա-
նայս՝ դողացեալք եւ զարհուրեալք յե-
րեսաց ձեռին Տեառն զօրութեանց՝ զոր
17 արկցէ ինքնին ի վերայ նոցա ։ Եւ եղի-
ցի երկիրն Հրէաստանի ի խրատ Ե-
գիպտացւոցն. եւ ամենայն որ անուա-
նեսցէ զանուն երկրին առ նոսա, զար-
հուրեսցին վասն խորհրդին զոր խորհե-
ցաւ Տէր զօրութեանց ի վերայ նոցա ։
18 Յաւուր յայնմիկ եղիցին հինգ քաղաք
յերկրին Եգիպտացւոց՝ որ խօսիցին զՔա-
նանացւոց լեզուն, եւ երդնուցուն յա-
նուն Տեառն զօրութեանց. [1]քաղաք Ա-
19 սեդեկ կոչեսցի մի քաղաք ։ Յաւուր
յայնմիկ եղիցի սեղան Տեառն յերկրին
Եգիպտացւոց, եւ արձան կանգնեալ
20 Տեառն ի սահմանս նոցա. Եւ եղիցի ի
նշան [2]յաւիտենից Տեառն" յերկրին Ե-
գիպտացւոց. զի աղաղակեսցեն առ Տէր
վասն նեղութեան իւրեանց, եւ առա-
քեսցէ նոցա [3]Տէր այր մի որ փրկեսցէ
զնոսա, եւ դատաստանաւ" փրկեսցէ զնո-
21 սա ։ Եւ ծանիցի Տէր Եգիպտացւոցն, եւ
ծանիցեն Եգիպտացիքն զՏէր յաւուր
յայնմիկ. եւ մատուսցեն զոհս եւ պա-
տարագս, եւ զիցեն ուխտս Տեառն՝ եւ
22 կատարեսցեն ։ Եւ հարցէ Տէր զԵգիպ-
տացիսն մեծամեծ հարուածովք, եւ
բժշկելով բժշկեսցէ զնոսա. եւ դարձ-
ցին առ Տէր, եւ լուիցէ նոցա եւ բժշ-
23 կեսցէ զնոսա ։ Յաւուր յայնմիկ եղիցի
ճանապարհ Եգիպտացւոցն առ Ասորես-
տանեայսն, եւ մտցեն Ասորեստանեայքն
յԵգիպտոս, եւ Եգիպտացիքն երթիցեն
առ Ասորեստանեայսն, եւ ծառայեսցեն
24 Եգիպտացիքն [4]Ասորեստանեայցն ։ Յա
ւուր յայնմիկ եղիցի Իսրայէլ երրորդ ի
մէջ Եգիպտացւոցն եւ ի մէջ Ասորես-
25 տանեայցն, [5]օրհնեալ յերկրին. Զոր օրհ-
նեաց Տէր զօրութեանց, եւ ասէ, Օրհ-
նեալ եղիցի ժողովուրդ իմ [6]որ յԵգիպ-
տոս եւ որ յԱսորեստանեայսն", եւ ժա-
ռանգութիւն իմ Իսրայէլ ։

Գլ. Ի

1 Յամին յորում եկն Տանաթան յԱզով-
տոս՝ ի ժամանակին իբրեւ առաքեաց
[7]յԱռանայ արքայէ Ասորեստանեայց, եւ
եա պատերազմ ընդ Ազովտոսյ եւ առ
2 զնա. Յայնժամ խօսեցաւ Տէր ընդ Ե-
սայեայ որդւոյ Ամովսայ եւ ասէ, Երթ
եւ ի բաց հան զքուրձդ ի միջոյ քում-
մէ, եւ լոյծ զհողաթափդ յոտից քոց.
եւ արար այնպէս, եւ գնայր մերկ եւ
3 բոկ ։ Եւ ասէ Տէր, Զոր օրինակ գնայ
ծառայ իմ Եսայի մերկ եւ բոկ, [8]այդ-
պէս զերիս ամս եղիցին նշանք եւ ա-
րուեստք" Եգիպտացւոց եւ Եթովպաց-
4 ւոց ։ [9]Եւ ի միւս ամսեան՝ թէ այդպէս
տարցի արքայն Ասորեստանեայց ի գե-
րութիւն զԵգիպտացիսն եւ զԵթով-
պացիսն", զերիտասարդս եւ զծերս՝ մերկս
եւ բոկս խայտառակեալ զամօթ Եգիպ-
5 տացւոցն։ Եւ [10]ամաչեսցեն ի պարտութիւն
մատնեալ Եգիպտացիքն ի վերայ Եթով-
պացւոցն, յորս յուսացեալ էին Եգիպ-
6 տացիքն որք էին" նոցա փառք։ Եւ ասաս-
ցեն բնակիչք [11]կղզւոյդ այդորիկ յաւուր
յայնմիկ, Ահաւասիկ մեք յուսացեալ էաք
ապաստան լինել ի սոսա յօգնականու-
թիւն, [12]եւ սոքա ոչ կարացին ապրեցու-
ցանել եւ ոչ զանձինս իւրեանց" յարքա-
յէն Ասորեստանեայց. եւ մեք զիա՞րդ
ապրեսցուք ։

Գլ. ԻԱ

1 Տեսիլ անապատին ծովու ։
Իբրեւ մրրիկ [13]ընդ անապատ անցցէ,
2 յանապատէ եկեալ յերկրէ ։ Ահագին է
տեսիլն, եւ խստութիւն պատմեցաւ ինձ.
որ արհամարհեացն է՝ արհամարհէ, եւ որ
անօրինեացն է՝ անօրինէ ։ Ի վերայ իմ
հասին Եղամացիք, եւ հրեշտակք Պար-
սից գան ի վերայ իմ. արդ հեծեծեցից
3 եւ մխիթարեցից զանձն իմ ։" Վասն այ-
սորիկ լցաւ մէջ իմ դողութեամբ, եւ
երկունք կալան զիս իբրեւ զծննդականի.
անկեցայ՝ զի մի՛ լուայց, փութացայ՝

[1] Ոմանք. մին կոչեսցի քաղաք Հերէս, այսինքն՝ կործա-նման, կամ, Արեգ. [2] Ոմանք. և ի վկայութիւն Տեառն զօրութեանց. [3] Ոմանք. փրկիչ և ուսոգ այր և. [4] Կամ, ընդ Ասորեստանեայսն. [5] Ոմանք. օրհնութիւն. [6] Ոմանք. Եգիպտոս, եւ գործ ձեռաց իմոց Ասուր.

[7] Ոմանք. ի Սարգոնայ. [8] Ոմանք. զերիս ամս ի նշան եւ յարուեստ. [9] Ոմանք. Այդպէս տարցի արքայն Ասորեստանեայց զգերութիւն Եգիպտացւոցն, և զվտարանդութիւնն Եթովպացւոց. [10] Ոմանք. քամահեցին և ամաչեսցեն յԵթովպացւոցն, յորս յուսացեալ էին. եւ յԵգիպտոսէ որ էր. [11] Կամ, ծովեզերեայ երկրիդ. [12] Ոմանք. ապրել. [13] Ոմանք. ի Հարաւոյ անցանէ, յանապատէ գայ յերկրէ ահաւորէ ։ (2) Տեսիլ խիստ յայտնեցաւ ինձ որ յափշտակէն՝ յափշտակէ, և որ աւերէն՝ աւերէ ։ Ոմանք. Եղամացիք. պաշարեցէք, Մարք. զամենայն հեծութիւն դադարեցուցի ։

4 զի մի՛ տեսից ։ [1]Սիրտ իմ զարձաւ ի մո-
լորութիւն, եւ անօրէնութիւն զնա
ընկղմէր զիս․ անձն իմ եկաց ի դողու-
թեան․ զիտես զգխտաւորութիւն քո ։
5 Պատրաստեա սեղան, կեր արբ․ արիք,
6 իշխանք, պատրաստեցէք վահանս՚՚ Զի
այսպէս ասաց ցիս Տէր, Գնա զու [2]ան-
ձամբ անձին դէտ լինիջիր, եւ զոր ինչ
7 տեսանիցես պատմեսջիր ։ Եւ տեսի հե-
ծեալս երկուս․ հեծեալ մի իշոյ եւ հե-
ծեալ մի ուղտու․ լսել լուր բազում
ունկնդրութեան․ եւ կոչեա զՈւրիա ի
8 դիտանոցդ, ասէ Տէր ։ Եւ կացի զտիւն
ողջոյն եւ զգիշերն ամենայն ի վերայ
9 բանակին․ Եւ տեսի զի գայր նոյն հե-
ծեալ երկձի՚՚ պատասխանի ետ եւ ա-
սէ, Անկաւ կործանեցաւ Բաբելոն, եւ
ամենայն պատկերք [3]նորա եւ ձեռա-
10 գործք իւր՚՚ կործանեցան յերկիր ։ [4]Լուա-
րուք մնացորդք եւ ցաւագնեալք, լուա-
րուք զոր լուայ ի Տեառնէ զօրութեանց,
զոր Աստուած Իսրայելի պատմեաց մեզ՚՚
11 Տեսիլ [5]Եդովմայեցւոցն ։
Առ իս [6]կոչեա ի Սէիր լեռնէ․ Պահեցէք
12 զմահարձանս․ Պահեցից ընդ առաւօտն
եւ զցայգ․ եթէ խնդրեսցես, խնդրեսջիր
եւ առ իս բնակեսջիր ։՚՚
13 [7]Առած ի վերայ Արաբացւոց ։
Ընդ երեկոյս [*]ննջեսցես յանտառի ճա-
14 նապարհին Դովդանիմ՚՚ ։ Բերէք ջուր ընդ
առաջ ծարաւեաց, բնակիչք Թեմանու․
հացիւ ընդ առաջ ելէք փախստէից ։
15 [8]Վասն բազմութեան սպանելոցն, եւ
վասն բազմութեան մոլորելոցն, եւ վասն
բազմութեան սրոյն, եւ վասն բազմու-
թեան աղեղանցն լարելոց, եւ վասն
բազմութեան անկելոցն ի պատերազմի՚՚
16 Զի այսպէս ասաց ցիս Տէր․ Ամ մեւս
եւս իբրեւ զամի վարձկանի, եւ պա-
կասեսցեն փառք որդւոյն Կեդարու ։
17 Եւ մնացորդք աղեղնաւորաց զօրաւորաց
որդւոցն Կեդարու եղիցին սակաւաւորք․
զի Տէր Աստուած Իսրայելի խօսեցաւ ։

ԳԼ․ ԻԲ

1 Պատգամ ձորոյն [9]Սիոնի ։
Զի՞ զու, զի՞՚՚ ընդ քեզ, զի ելէք դուք
այժմ ամենեքեան [10]ի տանիս նանրու-
2 թեան։ Լցաւ քաղաքդ զուժկանօք՚՚, քա-
ղաքդ պերճացեալ․ վիրաւորք քո ոչ
վիրաւորք սուսերի, եւ ոչ դիակունք քո՛
3 դիակունք պատերազմաց ։ Ամենայն իշ-
խանք քո [11]փախստեայք, եւ կալանաւորք
քո կապեալք սաստկութեամբ․ եւ հզօրք
քո՚՚ առ հասարակ կալեալ, բացէ ի
4 բաց փախստականք ։ Վասն այսորիկ ա-
սացի, Թոյլ տուք ինձ լալից դառնա-
պէս․ մի՛ բռնադատէք մխիթարել զիս
ի վերայ բեկման դստեր ազգի իմոյ ։
5 Զի օր խռովութեան եւ կորստեան կոխ-
ման եւ մոլորութեան ի Տեառնէ զօ-
րութեանց ի ձորն [12]Սիոնի․ մեծ եւ փոքր
առ հասարակ մոլորեալք դանդաչեն ի
6 վերայ լերանց՚՚ ։ Իսկ Եղամացւոցն ա-
ռեալ զկապարճս, հեծեալք յերիվարս,
7 եւ [13]զունդք ճակատելոց՚՚ ։ Եւ ընտիր ըն-
տիր ձորք քո [14]լցցին կառօք, եւ հեծեալք
8 երիվարօք [15]խցցեն զդրունս քո ։ Եւ կոր-
ծանեսցեն զդրունս Յուդայ․ եւ տեսցեն
յաւուր յայնմիկ զընտիր ընտիր ապա-
9 րանս քաղաքին․ Եւ յայտնեսցեն զծա-
ծուկս ապարանից բարձանցն Դաւթի․
եւ տեսին զի բազումք էին, եւ զի զար-

[1] Եբր․ Սիրտ իմ մոլորեցաւ, սարսափ կալաւ զիս զգիշեր ուրախութեան իմոյ եդ ինձ յերկեւղ ։ (5) Արկեալ սեղան, կացուցեալ դէտ՝ ուտեն եւ ըմպեն․ արիք, իշխանք, օծեցէք զվահանս ։ [2] Եբր․ կացո դէտ, զոր ինչ տեսանիցէ՝ պատմեսցէ ։ (7) Եւ ետես հեծեալս զոյգ առնուձիոյ, հեծեալ իշոյ, հեծեալ ուղտու․ եւ ուշ եդ ուշիւ, ուշիւ մեծաւ․ (8) Եւ գոչեաց իբրեւ զառեւծ, Ի վերայ դիտանոցի, Տէր իմ, կամ զտիւն ողջոյն, եւ ի վերայ պահպանութեան իմոյ կամ զգիշերն ողջոյն ։ (9) Եւ ահա գայ հեծելազօր, զոյգ առնուձիոյ, եւ [3] Եբր․ դից նորա [4] Եբր․ Կոխեալք իմ, եւ որդի կալոյ իմոյ․ զոր լուայն ի Տեառնէ զօրութեանց, յԱստուծոյ Իսրայելի, պատմեցի ձեզ ։ [5] Եբր․ Դումայ, այսինքն՝ Ամայութիւն [6] Եբր․ գոչիւն ի Սէիրայ, Պահապան, զինչ զգիշերոյ, պահապան, զինչ զգիշերոյ ։ (12) Ասէ պահապանն, Գայ առաւօտ, եւ գիշեր եւս․ եթէ խնդրելոց էք․ խնդրեսջիք․ դարձարուք, եկայք ։ [7] Եբր․ Պատգամ, կամ, Տեսիլ [*] Եբր․ Ննջեսջիք յանտառին Արաբացւոց, ճանապարհորդք Դովդանիմայ [8] Եբր․ Զի յերեսաց սուսերաց փախուցեալ են, յերեսաց սրոյ մերկացելոյ, եւ յերեսաց աղեղան լարելոյ, եւ յերեսաց սաստկութեան պատերազմի։ [9] Եբր․ տեսլեան։ Զի՞ [10] Եբր․ ի տանիս ։ (2) Աղմկաւ լի, քաղաքդ աղմկեալ [11] Եբր․ փախստեայք միանգամայն, յաղեղնաւորաց կապեցան․ ամենեքին որ գտան ի քեզ՝ [12] Եբր․ տեսլեան․ որ քանդեն զպարիսպն, եւ գոչիւն մինչեւ ի լեառնն [13] Եբր․ Կիր մերկացոյց զասպար [14] Եբր․ լցան [15] Եբր․ գումարեցան առ դրունս ։ (8) Եւ եբաց զծածկոյթն Յուդայ․ եւ հայեցաք յաւուր յայնմիկ ի սպառազինութիւն տան անտառին․ (9) Եւ զճեղքս քաղաքին Դաւթի տեսէք, զի բազում են․ եւ կուտեցէք զջուրս աւազանին որ ի խո-

10 ձուցին զհին ջրմուղն ի քաղաքն . Եւ զի
քակեցին զապարանս Երուսաղեմի յամ-
11 րութիւն պարսպաց քաղաքին ։ Եւ հա-
նէք ձեզ ջուր ի մէջ երկուց պարսպաց ,
ներքսագոյն քան զհին ջրմուղն՝՝ . եւ
ոչ հայեցարուք յայն որ արարն զնա [1]ի
սկզբանէ , եւ զհաստիչ նորա ի հեռուստ
12 ոչ ծաներուք ։ Եւ կոչեաց Տէր [2]Սաբա-
ւովթ յաւուր յայնմիկ լալումն եւ կո-
ծումն [1]եւ աչխարումն՝՝ եւ գերծումն
13 եւ զգածումն քրձի ։ Եւ նոքա արարին
ուրախութիւն եւ ցնծութիւն . սպա-
նանէին զուարակս եւ զենուին ոչխարս .
զի կերիցեն միս եւ արբցեն գինի . եւ
ասասցեն , Կերիցուք եւ արբցուք՝ քան-
14 զի վաղիւ մեռանիմք ։ Եւ այն յայտ-
նեալ կայ յականջս *Տեառն զօրութեանց,
Զի ոչ թողուցուն ձեզ մեղքդ այդոքիկ՝
մինչեւ մեռանիցիք , ասէ Տէր [3]զօրու-
15 թեանց ։ Այսպէս ասէ Տէր Տէր Սաբա-
ւովթ . Գնա դու եւ մուտ ի գիւսն անդր
առ Սոմնաս հանդերձապետ , եւ ասաս-
16 ցես զնա , Զի՞ եկեալ ես այսր , եւ զի՞նչ
խնդիր է քո աստ . զի փորեցեր դու քեզ
աստ գերեզման , [4]եւ արարեր քեզ յարկ
17 ի վիմիդ ։ Ահաւասիկ Տէր զօրութեանց
հանցէ եւ սատակեսցէ զքեզ , այր դու , եւ
հանցէ զպատմուճան քո , եւ զպսակդ
18 փառաց քոց . Եւ ընկեսցէ զքեզ յերկիրն
մեծ եւ յանչափ , եւ անդ մեռանիցիս .
եւ արասցէ զկառսն քո զգեղեցիկս յա-
նարգութիւն , եւ զտուն իշխանութեան
19 քո ի կոխումն ։ Եւ մերժեսջիր ի պե-
տութենէ քումմէ եւ՝՝ ի հաստատու-
20 թենէ քումմէ ։ Եւ եղիցի յաւուր յայն-
միկ՝ կոչեցից զծառայ իմ զԵղիակիմ
21 Քեղկեայ . Եւ զգեցուցից նմա զպատմու-
ճանդ քո , եւ [5]տաց նմա զպսակդ քո ճո-
խութեամբ՝՝ , եւ տաց ի ձեռս նորա զհա-
զարապետութիւնդ քո , եւ եղիցի իբրեւ
հայր բնակչացդ Երուսաղեմի եւ [6]բնակ-
22 չացդ Յուդայ ։ Եւ տաց զփականս [7]Դաւ-
թի նմա . իշխեսցէ , եւ ոչ ոք իցէ որ
23 նմա ընդդէմ դառնայցէ ։ Եւ կացուցից
զնա իշխան՝՝ ի հաւատարիմ տեղւոջ ,
եւ եղիցի յաթոռ փառաց տան հօր իւ-
24 րոյ ։ [8]Եւ եղիցին ի նա յուսացեալք ա-
մենայն փառաւորք տան հօր իւրոյ՝ ի
փոքրկանց մինչեւ ի մեծամեծս . եւ զա-
մենայն սնօթս՝ ի փոքուէ մինչեւ յա-
նօթս ագանովթայ՝ բացցէ , եւ ոչ ոք
իցէ որ փակիցէ , եւ փակեսցէ՝ եւ ոչ
ոք իցէ որ բանայցէ . եւ եղիցին կա-
25 խեալ զնմանէ՝՝ Յաւուր յայնմիկ , այս-
պէս ասէ Տէր զօրութեանց . շարժեսցի
[9]մարդ հաստատուն՝՝ ի հաւատարիմ տեղ-
ւոջէ , անկցի եւ կործանեսցի , եւ [10]բարձցին
փառք՝՝ նորա ի նմանէ . զի Տէր խօսեցաւ ։

### ԳԼ . ԻԳ

1 Պատգամ Տիւրոսի ։
Ողբացէք . նաւք [11]Կարքեդոնացւոց . զի
կորեան եւ ոչ եւս գայցեն յերկրէն Կիտաց-
2 ւոց . վարեցան ի գերութեան ։ Ո՞ւմ նմա-
նեցան բնակիչք կղզւոյդ այդորիկ . վաճա-
ռականք Փիւնիկեցւոց որ անցանեն ընդ
3 ծով , ընդ ջուրս բազումս . Զաւակ գնո-
ղիցն իբրեւ զարդիւնս ամարայնոյ ամ-
4 փոփելոյ վաճառականք ազգացն՝՝ Յա-
մօթ լեր , Սիդոն , ասէ ծով , եւ զօրու-
թիւն ծովու ասասցէ , Ոչ երկնեցի , եւ
ոչ ծնայ , եւ ոչ սնուցի երիտասարդս ,
5 եւ ոչ բարձրացուցի կուսանս ։ Իսկ յոր-
ժամ լուր լիցի յերկիրն Եգիպտոսի ,
6 ցաւք կալցին զնոսա վասն Տիւրոսի ։ Եր-
թայք [12]ի Կարքեդոն . ողբացէք , բնակիչք
7 կղզւոյդ այդորիկ ։ [13]Ո՞չ այդ իսկ էր ամ-

---

նարհ ։ (10) Եւ զտունս Երուսաղեմի թուեցէք , եւ կործանեցէք զտունս յամրութիւն պարըս-պացն ։ (11) Եւ արարէք ջրաշեղջ ի մէջ երկուց պարսպացն վասն ջուրց հնոյ աւազանին [1]Եբր. դոյոտէ [2]Եբր. Եհովայ Սաբաւովթ [*]Եբր. իմ ի Տեառնէ [3]Եբր. Տէր զօրութեանց [4]Եբր. որպէս որ փորէ իւր գերեզման ի բարձունս , և կոփէ իւր բնակարան ի վիմի ։ (17) Ահաւադիկ Տէր ընկենլով ընկեսցէ զքեզ . այր դու , եւ փարելով փարեսցի զքեւ ։ (18) Գլորելով գլորեսցէ զքեզ գլորմամբ իբրեւ զգնդակ յընդարձակ երկրի աստ և անտի . անդ մեռանիցիս , եւ անդ եղիցին կառք փառաց քոց , ով անարգութիւն տան Տեառն քո ։ (19) Եւ մերժեցից զքեզ ի պաշտամանէ քումմէ , եւ խլեցից զքեզ [5]Եբր. զօտւով քով զօրացուցից զնա

[6]Եբր. տանդ [7]Եբր. տանն Դաւթի յուս նորա , եւ բացցէ եւ մի՛ ոք փակեսցէ , և փակեսցէ և մի՛ ոք բացցէ ։ (23) Եւ վարեցից զնա իբրեւ բեւեռ (իշխան) [8]Եբր. Եւ կախեսցին զնմանէ ամենայն փառք տան հօր իւրոյ . տոհմիկքն և անարգք . ամենայն սնօթք փոքունք , յանօթոց բաժակաց մինչեւ յանօթս նուագարանաց ։ [9]Եբր. բեւեռն [10]Եբր. բարձցի բեռն [11]Եբր. Թարսսի , զի եղեւ աւերումն ի տանէ մինչեւ ցդուռնն . յերկրէն Կիտացւոց յայտնեցաւ նոցա ։ (2) Լուռ լերուք , բնակիչք կղզւոյ , վաճառականք Սիդոնի որ անցանեն ընդ ծով՝ լցին զքեզ ։ (3) Եւ ի ջուրս բազումս սերմն Սիհովրայ , հունձք գետոյն մուտք նորա , եւ եղեւ շահավաճառ ազգաց ։ [12]Եբր. ի Թարսիս [13]Եբր. Միթէ ա՞յս իցէ ձեզ ուրախութեան քաղաք . ի վաղուց անտի հնութիւն նորա

բարտաւանութիւն ձեր ի սկզբանէ, մինչ
չեւ մատնեալ էր նորա՛՛. եւ վարեսցի
նա յոտից իւրոց ի պանդխտութիւն հե-
8 ռաւոր։ Իսկ ո՞ խորհեցաւ զայս ի վե-
րայ Տիւրոսի. [1]միթէ ի վա՞յր ինչ ոք
էր՝ կամ ակա՞ր ոք. նա՛՛ վաճառականք
նորա փառաւորք [2]Քանանացւոց, եւ
9 առգնօղք նորա իշխանք երկրի։ Տէր զօ-
րութեանց խորհեցաւ քակել զամենայն
ամբարտաւանութիւն փառաւորաց, եւ
անարգել զամենայն պատուականս ի վե-
10 րայ երեսաց երկրի։ [3]Գործեա զերկիր
քո, զի այսուհետեւ ոչ եւս գան նաւք
11 ի Կարքեդոնայ. Եւ ձեռն քո ոչ եւս զօ-
րասցի ի վերայ ծովու, որ զայրացու-
ցանէիր զթագաւորս. Տէր զօրութեանց
հրամայեաց վասն Քանանու՝ կորուսա-
12 նել զզօրութիւն նորա։ Եւ ասասցեն՝
եթէ Այսուհետեւ մի՛ եւս յաւելուցուք
թշնամանել եւ զրկել զկոյս դուստր
Սիոնի. այլ յոտն կաց՝ եւ անց ընդ ծով.
եւ թէպէտ եւ գնասցես ի Կիտիս, եւ
13 ոչ անդ լիցի քեզ հանգիստ։ Եւ եթէ
յերկիրն Քաղդէացւոց, սակայն եւ այն
աւերեալ է յԱսորեստանեայց, եւ անդ
դուլ եւ դադար քեզ ոչ գտանիցի։ Արկ
զհիմն նորա Սիհիմ, կանգնեաց զմա-
հարձանս նորա, եւ յորոյց զաշտարակս
նորա. արդ անկաւ կործանեցաւ պա-
14 րիսպ նորա։՛՛ Ողբացէք, նաւք [4]Կարքե-
դոնացւոց, զի կորեաւ ամրութիւն ձեր։
15 Եւ եղիցի յաւուր յայնմիկ, լքեալ լիցի
Տիւրոս ամս եւթանասուն՝ իբրեւ զժա-
մանակ թագաւորի միոյ, [2]եւ իբրեւ
զժամանակ կենաց մարդոյ միոյ՛՛. եւ
յետ ամացն եւթանասնից եղիցի Տիւ-
16 րոս իբրեւ երգ պոռնկի միոջ։ Ա՛ռ քնար,
[5]յածեաց, կածեաց լքեալ քաղաք պոռն-
կութեան՛՛, բաջ հար. յաճախեա երգել՝
17 զի քո յիշատակ մնասցէ։ Եւ եղիցի յետ
ամացն եւթանասնից, այց արասցէ Տէր
Տիւրոսի. եւ [6]միւսանգամ անդրէն ի նոյն
յառաջին կարգն հաստատեսցի. եւ ե-
ղիցի ի նմա վաճառ ամենայն թագաւո-
րաց՛՛ տիեզերաց ընդ ամենայն երեսս
18 երկրի։ Եւ եղիցի վարձ վաճառի նորա
Տեառն նուիրեալ. ոչ [7]անձանց ինչ ժո-
ղովեսցեն՛՛, այլ բնակելոցն առաջի
Տեառն եղիցին ամենայն վաճառք նո-
րա, ուտել, [8]ըմպել եւ ուրախ լինել ի
նշան յիշատակաց առաջի Տեառն՛՛։

## ԳԼ. ԻԴ

1 Ահաւասիկ Տէր ապականեսցէ զտիե-
զերս. եւ աւերեսցէ զնա, եւ տապա-
լեսցէ զատակս նորա, եւ ցրուեսցէ
2 զբնակեալս ի նմա։ Եւ եղիցի ժողո-
վուրդն իբրեւ զքահանայն, եւ ծառայն
իբրեւ զտէրն, եւ աղախինն իբրեւ զտի-
կինն. եւ եղիցի գնօղն իբրեւ զվաճա-
ռականն, եւ փոխատուն իբրեւ զփո-
խառուն, եւ պարտապանն իբրեւ զպար-
3 տատէրն։ Ապականելով ապականեսցի
երկիր, եւ յափշտակութեամբ յափշտա-
կեսցի երկիր, զի բերան Տեառն խօսե-
4 ցաւ զայս։ Սուգ առ՝ կործանեցաւ
երկիր, կործանեցան եւ ապականեցան
տիեզերք, սուգ առին բարձունք երկ-
5 րի։ Քանզի երկիր [9]անօրինեցաւ բնակ-
չօք իւրովք. վասն զի անցին զօրինօքն
Տեառն, եւ փոխեցին զհրամանս նորա,
6 եւ ցրեցին զուխտն յաւիտենից։ Վասն
այսորիկ նզովք [10]կերիցեն զերկիր, զի
մեղան բնակիչք նորա. վասն այսորիկ
[11]անանկք եղիցին՛՛ բնակիչք նորա, եւ
7 մնասցեն մարդք սակաւաւորք։ Սուգ
առցէ [12]գինի, սուգ առցէ այգի, յոգւոց
հանցեն ամենայն խրախճանք յան-
8 ձինս իւրեանց։ Լռեսցին ուրախութիւնք
թմբկաց, լռեսցին [13]հպարտութիւնք եւ
մեծութիւնք ամպարշտաց՛՛, լռեսցին
9 ձայնք քնարաց, [14]Յամօթ եղեն եւ ոչ
ըմպէին՛՛ զգինի, դառնացաւ ցքի ըմպե-

[1]Եբր. որ պսակէր. որոյ [2]Յեբր. դոլոնէ [3]Եբր. Անց ընդ երկիր քո իբրեւ գետ, դուստր Թարսըսի. չիք այլ եւս գօտի։ (11) Զձեռն իւր ձգեաց ի վերայ ծովու, զարհուրեցոյց թագաւորութիւնս, Տէր պատուէր ետ Քանանացւոյն կործանել զամուրս նորա. (12) Եւ ասէ, Ոչ յաւելուցուս ուրախ լինել, հարստահարեալ կոյս, դուստր Սիդոնի. ել, ի Կիտիմ անց, անդ եւս ոչ եղիցի քեզ հանգիստ։ (13) Ահա երկիրն Քաղդէացւոց, նա չէր ժողովուրդ, Ասորեստանեայն արկ զհիմն նորա վասն բնակչաց անապատի կանգնեցին զաշտարակս նորա. յարուցին զապարանս նորա. եդ զնա յաւերակ։ [4]Եբր. Թարսըսի [5]Եբր. Շրջեաց ընդ քաղաքն, պոռնիկ լքեալ

[6]Եբր. դարձցի միւսանգամ ի շահ իւր, եւ պոռնկեսցի ընդ ամենայն թագաւորութիւնս [7]Եբր. գանձեսցի, եւ ոչ մթերեսցի [8]Եբր. ուտել յագ եւ զգենուլ չքնաղս [9]Եբր. պղծեցաւ ընդ [10]Եբր. կերան [11]Եբր. այրեցան [12]Եբր. գինի նոր [13]Եբր. բարբառք ցնծացելոց [14]Եբր. Յերգս մի՛ արբցեն

10 լեաց ։ [1]Աւերեցան ամենայն քաղաքք ,
դրունք ապարանից կարկեցան , զի ոչ
11 ոք էր որ մտանէր ։ Ողբացէք ի վերայ
գինւոյ ընդ ամենայն տեղիս. լռեաց”
ամենայն ուրախութիւն , սպառեցաւ
12 ամենայն ուրախութիւն երկրի ։ [2]Լքցին
քաղաքք աւերակք , եւ ապարանք մնա-
ցեալք կործանեսցին . այս ամենայն եղիցի
13 յերկրի ի մէջ հեթանոսաց ։ Զոր օրինակ
եթէ ճռաքաղ ոք առնիցէ զձիթենի ,
այնպէս ճռաքաղ առնիցեն զնոսա . եւ
եթէ դադարեսցեն կութք , նոքա մե-
14 ծաձայն աղաղակեսցեն ։ Բայց մնա-
ցեալքն յերկրի՝ ուրախ լինիցին միան-
գամայն փառօքն Տեառն , եւ խռովես-
15 ցին ջուրք ծովու ։ Վասն այսորիկ փառք
Տեառն ի կղզիս ծովու , եւ անուն Տեառն
փառաւոր եղիցի ։ Տէր Աստուած Իսրա-
16 յելի , Ի ծագաց երկրի արուեստս լուաք ,
յոյս բարեպաշտին . եւ ասիցեն , Խոր-
հուրդ իմ ինձ , խորհուրդ իմ ինձ եւ ի-
մոցն . վա՜յ արհամարհողաց որ արհա-
մարհեն , եւ արհամարհանօք արհամար-
17 հիցեն զօրէնս” Ա՛հ , գուբ եւ որոգայթ
18 ի վերայ ձեր, բնակիչք երկրի ։ Եւ եղի-
ցի որ փախիցէ յահէ անտի՝ անկցի ի
գուբն , եւ որ ելանիցէ ի գբոյն , ըմբռ-
նեսցի յորոգայթն . զի պատուհանք բա-
ցան յերկնից , եւ շարժեսցին հիմունք
19 երկրի ։ [3]Խռովութեամբ խռովեսցի եր-
կիր , եւ տարակուսելով տարակուսես-
20 ցի երկիր . խոնարհեցաւ . Շարժելով
շարժեսցի երկիր , իբրեւ զտաղաւար
մրգապահաց . իբրեւ զարբեալն եւ զխա-
ղակ,” գլորեսցի եւ մի՛ կարասցէ կանգ-
նել . [4]զի սաստկացաւ ի վերայ նորա ա-
21 նօրէնութիւն” Եւ եղիցի յաւուր յայն-
միկ՝ [5]ածցէ Աստուած ի վերայ զարդուն
երկնից զձեռն իւր՝ , եւ ի վերայ թա-
22 գաւորաց երկրի՝ որ ի վերայ երկրի ։ Եւ
[6]ժողովեսցեն զժողովս նորա ի կապանս
եւ պաշարեսցեն” յամուրս. եւ յետ բա-
զում ժամանակաց այցելութիւն եղիցի
23 նոցա ։ Եւ [7]հալեսցի աղիւսն , եւ կոր-
ծանեսցի պարիսպն”. զի թագաւորեսցէ
Տէր ի լերին Սիոնի եւ յԵրուսաղէմ , եւ
առաջի ծերոցն փառաւորեսցի ։

## ԳԼ . ԻԵ

1 [8]Տէր Աստուած իմ , փառաւոր արարից
զքեզ , օրհնեցից զանուն քո , զի արա-
րեր սքանչելի իրս , զխորհուրդն առա-
2 ջին [9]զճշմարիտ ։ Այո , Տէր , զի եդիր
զքաղաքս ի հողաբլուրս , եւ զքաղաքս
ամուրս [10]ի կործանումն հիմանց նոցա .
քաղաք ամպարշտաց” յաւիտենից մի
3 շինեսցի ։ Վասն այսորիկ օրհնեսցէ զքեզ
ժողովուրդ [11]աղքատ, եւ քաղաքք մարդ-
4 կան զրկելոց օրհնեսցեն զքեզ . Զի ե-
ղեր ամենայն քաղաքի խոնարհի օգ-
նական , եւ տրտմելոց վասն կարօտու-
թեան՝ յարկ ապաւինի. ի մարդոց չա-
5 րաց փրկեցեր զնոսա ։ Ապաւէն ծարա-
ւեաց եւ ոգի մարդկան զրկելոց , իբրեւ
մարդոց թալկացելոց՝ ծարաւեաց ի Սիոն,
ի մարդոց ամպարշտաց որոց մատնեցեր
6 զմեզ ։” Եւ արասցէ Տէր Սաբաւովթ ա-
մենայն հեթանոսաց ի լերինս յայսմիկ .
[12]արբցեն ուրախութիւն , արբցեն գինի .
օծցին իւղով ի մրրոյ պարգելոյ , եւ
7 ընկլցին ի լերինս յայսմիկ ։ Պատմեա
զայս ամենայն հեթանոսաց . զի այս խոր-

---

[1]Եբր. Աւերեցաւ քաղաքն ամայութեան , փակեցաւ ամենայն տուն ի մտանելոյ ։ (11) Աղաղակ վասն գինւոյ ի հրապարակս. մթացաւ [2]Եբր. Մնաց ի քաղաքին ամայութիւն, և դուռն հարաւ աւերմամբ ։ (13) Զի այնպէս եղիցի ի մէջ երկրի, ի միջի ժողովրդեան, որպէս թօթափումն ձիթենւոյ, որպէս ճռաքաղ ի կութս այգւոյ ։ (14) Նոքա ամբարձցեն զձայն իւրեանց , երգս առցեն ցնծութեամբ, ի մեծվայելչութիւն Տեառն ձայն բարձցեն ի ծովէ ։ (15) Վասն այսորիկ յարեւելս փառաւոր արարէք զՏէր, ի կղզիս ծովու՝ զանուն Տեառն Աստուծոյ Իսրայելի ։ (16) Ի ծագաց երկրի օրհնութիւն լուաք. փառս արդարոյն. բայց ես ասացի, հիւծեալ եմ, հիւծեալ եմ, վա՜յ ինձ . նենգաւորք նենգեցին . և նենգելով նենգեցին նենգաւորք ։ [3]Եբր. Խորտակելով խորտակի երկիր. պատառելով պատառի երկիր . սասանելով սասանի երկիր . (20) Շարժելով շարժեսցի երկիր իբրեւ զարբեալն , եւ դեդեւեսցի իբրեւ զտաղաւար . և սաստկասցի ի վերայ նորա անօրէնութիւն իւր, եւ

[4]Յեբր. պակասէ [5]Եբր. այց արասցէ Տէր ի վերայ զօրուն բարձրութեան ի բարձունս [6]Եբր. ժողովեսցին նոքա որպէս ժողովին կապեալք ի վիրապի , եւ պաշարեսցին [7]Եբր. շիկնեսցի լուսին, եւ յամօթ լիցի արեւ [8]Եբր. Տէր, դու ես [9]Եբր. զհաւատարիմ և զճշմարիտ [10]Եբր. ի կործանումն. ապարանք օտարաց ոչ եւս են քաղաք, [11]Եբր. հզօր . քաղաք ազգաց ահաւորաց երկիցէ ի քէն. (4) Զի եղեր ապաւէն աղքատին, ապաւէն տնանկին ի նեղութեան նորա, ապաստան ի փոթորկէ, հովանի ի տօթոյ՝ ի լինել ոգւոյ անօրինաց իբր հեղեղ առ որմ ։ (5) Որպէս տօթ յերաշտի. զգոչիւն օտարաց ցածուցես . որպէս տօթ ընդ հովանեաւ ամպոյ, այնպէս աղաղակ ցնծութեան անօրինաց խափանեսցի ։ [12]Եբր. խրախութիւն պարարտութեան, խրախութիւն գինւոյ հնոյ , պարարտութիւն ուղղոյ , գինւոյ հնոյ ի մրրոյ պարզելոյ ։ (7) Եւ ընջեսցէ զծածկոյթն ձգեալ, ձգեալ ի վերայ ամենայն ազգաց , եւ զքօղն

8 հուրդ է ի վերայ ամենայն ազգաց։ Զօ-
րացաւ մահ եւ եկուլ. եւ դարձեալ ե-
հատ Աստուած" զամենայն արտօսր յա-
մենայն երեսաց, եւ զնախատինս ժո-
ղովրդեանն եբարձ յամենայն երկրէ. զի
[1]բերան Տեառն խօսեցաւ. զտապն հո-
վանեաւ ամպոյ, եւ զրազուկս հզօրաց
9 խոնարհեցուսցէ"։ Եւ ասասցեն յաւուր
յայնմիկ, Ահաւասիկ Տէր Աստուած մեր
յոր յուսացեալ էաք, եւ ապրեցուսցէ
զմեզ. զի սա է Տէր, եւ սպասէաք սմա.
եւ ցնծասցուք եւ ուրախ եղիցուք ի
10 փրկութեան [2]մերում։ Եւ տացէ մեզ
հանգիստ Աստուած" ի լերինս յայսմիկ.
եւ լիցի կոխան Մովաբացին[3]. զոր օրի-
նակ կոխիցէ ոք զկալ կամնասայլիւք,
11 [4]Եւ համբուսցանիցէ զձեռս իւր, նոյնպէս
եւ նա չուառեցոյց զնոսա ի կորուս-
նել. եւ խոնարհեցուսցէ զպարծրութիւն
12 նորա, յոր արկանէր զձեռս իւր" Եւ
զպարծրութիւն ապաստանի պարսպաց
[5]քոց խոնարհեցուսցէ, եւ իջցեն մին-
չեւ ի յատակս"։

ԳԼ. ԻԶ

1 Յաւուր յայնմիկ երգեսցեն զերգս զայս
յերկրին Հրէաստանի, [6]Թէ ահաւասիկ
քաղաքս զօրացեալ եւ փրկութիւն մեր,
կանգնեսցէ պարիսպս եւ պատուարս։
2 Բացէք զդրունս ձեր, եւ մտցէ ժողո-
վուրդ որ պահէ զարդարութիւն, եւ
3 պահէ զճշմարտութիւն. Վերակացու
ճշմարտութեան, եւ պահէ զխաղաղու-
4 թիւն, խաղաղութիւն։ Զի ի քեզ յու-
սով յուսացաք, Տէր, մինչեւ ցյաւի-
5 տեան։ Որ խոնարհեցուցեր իջուցեր
զբնակիչս բարձանց. զքաղաքս հզօրս
կործանեսցես, եւ իջուսցես զնոսա մին-
6 չեւ ի յատակս։ Կոխեսցեն զնոսա ոտք
հեզոց եւ խոնարհաց", զնայցք անան-
7 կաց։ Ճանապարհք բարեպաշտաց ու-
ղիղ են, [7]զիւրեալ եւ պատրաստեալ են
8 ճանապարհք աստուածապաշտաց։ Զի
ճանապարհք Տեառն իրաւունք են. յու-
սացաք յանուն քո՛ եւ ի յիշատակս ցան-
կութեամբ ոգւոց որում ցանկացաւ անձն
9 մեր։ Գիշերաց կանխէ հոգի իմ առ քեզ,
Աստուած, զի լոյս են հրամանք քո ի
վերայ երկրի. զարդարութիւն ուսարուք,
բնակիչք երկրի, զի կարկեցաւ ամպա-
10 րիշտն. Եւ ամենայն որ ոչ ուսանի զար-
դարութիւն յերկրի, ոչ արասցէ ճշմար-
տութիւն. բարձցի ամպարիշտն, զի մի՛
11 տեսցէ զփառս Տեառն" Տէր, բազուկ
քո բարձր, եւ ոչ ծանեան. ծանիցեն
[8]եւ ամաչեսցեն, եւ նախանձ առցէ զժո-
ղովուրդն անխրատ". եւ այժմ հուր զհա-
12 կառակորդս կերիցէ։ Տէր [9]Աստուած
մեր, տուր մեզ զխաղաղութիւն. զա-
13 մենայն ինչ հատուցեր մեզ։ Տէր Աս-
տուած մեր, ստացիր զմեզ. Տէր, բաց
ի քէն զայլ ոք ոչ գիտեմք, եւ զանուն
14 քո անուանեմք։ Իսկ մեռեալք զկեանս
ոչ տեսանիցեն, եւ բժիշկք ոչ յարուս-
ցեն. վասն այսորիկ ածեր սատակեցեր
եւ կորուսեր զամենայն արու նոցա։
15 Յաւել նոցա՛, Տէր, չարիս, յաւել չա-
րիս ի վերայ փառաւորաց երկրի. յեր-
16 կարեցեր ամենայն ծագաց երկրի։ Տէր,

արկեալ ի վերայ ամենայն հեթանոսաց։ (8) Ընջեսցէ զմահ յաւիտեան, և հատցէ Տէր Եհովայ [1]Եբր. Տէր խօսեցաւ [2]Եբր. նորա։ (10) Զի հանգիցէ ձեռն Տեառն [3]Եբր. —յեղէն յ——եղ——, ընդ իւրեւ [4]Եբր. Եւ ձգեսցէ զձեռն իւր ի միջի նորա, որպէս ձգիցէ որ լուղին ի լուղել, և խոնարհեցուսցէ զպարծրութիւն նորա հանդերձ հնարիւք ձեռաց իւրոց։ [5]Եբր. քոց կորացուսցէ, խոնարհեցուսցէ, եւ իջուսցէ յերկիր մինչեւ ի փոշի [6]Եբր. քաղաք զօրութեան է մեր, զփրկութիւն դիցէ պարիսպ և պատուար։ (2) Բացէք զդրունս և մտցէ ժողովուրդ արդար որ պահէ զճշմարտութիւն։ (3) Որ ունի միտս հաստատունս, պահես ի մեծի խաղաղութեան, զի ի քեզ յուսայ։ (4) Յուսացարուք ի Տէր մինչեւ ցյաւիտեան. զի Եհովայ Տէր վէմ յաւիտենական։ (5) Զի կորացուցանէ զբնակիչս բարձանց, զքաղաք բարձրացեալ խոնարհեցուցանէ. խոնարհեցուցանէ զնա մինչեւ ի գետին, իջուցանէ զնա ի փոշի։ (6) Կոխեսցեն զնոսա ոտք. ոտք նեղելոց [7]Եբր. Ուղիղդ, զճանապարհ արդարոյն դու վարես։ (8) Նա և ի ճանապարհի դատաստանաց քոց, Տէր, սպասեցաք քեզ, յանուն քո, և յիշատակ քո ցանկութիւն անձին մերոյ։ (9) Անձամբ իմով ցանկացայ քեզ ի գիշերի, նա եւ ոգւով իմով ի ներքս իմ խնդրեմ առաւօտուն զքեզ. զի յորժամ է դատաստան քո յերկրի, զարդարութիւն ուսցին բնակիչք աշխարհի։ (10) Ի լինել շնորհաց ամպարշտին. մի՛ ուսցի զարդարութիւն, յերկրի ուղղութեան գործէ անիրաւութիւն, եւ ոչ տեսանէ զբարձրութիւն Տեառն։ [8]Եբր. զնախանձ քո ի վերայ ժողովրդեան, և ամաչեսցեն [9]Եբր. տացես մեզ խաղաղութիւն. զի և զամենայն գործս մեր դու գործեցեր վասն մեր։ (13) Տէր Աստուած մեր, տիրեցին մեզ տեարք բաց ի քէն. ի քեզ միայն յիշեսցուք զանուն քո։ (14) Մեռեալք են, ոչ կեցցեն. ուրուականք են, ոչ յարիցեն. վասն որոյ այց արարեր և ջնջեցեր զնոսա, և կորուսեր զամենայն յիշատակ նոցա։ (15) Յաւելեր ազգին, Տէր, յաւելեր ազգին. փառաւորեցար. յերկարեցեր զամենայն ծագս երկրի։ (16) Տէր, ի նեղութեան խնդրեցին զքեզ. արկին աղերս ի խրատել քո զնոսա։

ի նեղութեան յիշեցաք զքեզ, զի փոքր
17 նեղութիւն է խրատ քո մեզ. եւ՛՛ Որ-
պէս որ երկնիցէն մերձ ի ծնանել, եւ
առ ցաւս իւր ճչիցէ, այնպէս եղեաք
[1]սիրելւոյն քում. վասն երկիւղի քոյ,
18 Տէր։ Յղացաք, երկնեցաք եւ ծնաք զհո-
գի փրկութեան քո. արարաք ի վերայ
երկրի. ոչ եւս կործանեսցուք մեք, այլ
19 կործանեսցին բնակիչք երկրի։ Յարիցեն
մեռեալք եւ կանգնեսցին որ լիցեն ի գե-
րեզմանս, եւ ուրախ եղիցին յերկրի,
զի ցօղ որ ի քէն է՝ բժշկութիւն է
նոցա. բայց երկիր ամպարշտաց կոր-
ծանեսցի։՛՛
20 Գնա, ժողովուրդ իմ, մուտ ի շտեմա-
րանս քո, փակեա զդուրս քո, թաքիր
առ ժամանակ մի, մինչեւ անցցէ բար-
21 կութիւն [2]Տեառն։ Զի ահա սաստիկ Տէր
ի [3]սրբութենէ իւրմէ ածցէ բարկութիւն
ի վերայ՛՛ բնակչաց երկրի. եւ յայտնես-
ցէ երկիր զարիւն իւր, եւ ոչ ծածկես-
ցէ զսպանեալսն։

ԳԼ. ԻԵ

1 Յաւուր յայնմիկ ածցէ Տէր զսուրն
[4]սուրբ եւ զմեծ եւ զհզօր ի վերայ [5]վի-
շապ օձին փախուցելոյ, եւ ի վերայ [5]վի-
շապ օձին կամակորի, եւ սպանցէ զվի-
2 շապն ի մէջ ծովուն։ Յաւուր յայնմիկ
այգի [6]վայելուչ ցանկալի տիրել ի վե-
3 րայ նորա։ Ես քաղաք ամուր, քաղաք
զուր պաշարեալ. արբուցից զնա՝ զի
առցի ի գիշերի, եւ ի տուէ կործանես-
4 ցի պարիսպ նորա։ Զի չէր որ ոչ ձեռ-
նամուխ լինէր ի նա. ո՞ տայր զիս պա-
հել զոճ արտոյ յագարակի. վասն այսր
պատերազմողի անարգեցի զնա այսու-
հետեւ։ Վասն այսորիկ արար Տէր զա-
մենայն ինչ զոր կարգեաց. Այրեցաք,
5 սաէ։ Բողոքեսցեն բնակիչք նորա. ա-
րասցուք ընդ նմա խաղաղութիւն։
6 ԺողովեալքորդիքՅակոբայնորաստունկ
բղխեսցեն. ծաղկեսցէ Իսրայէլ, եւ լցցին
7 տիեզերք պտղով նորա։ Միթէ որպէս
նայն եհար, սա այնպէս վիրաւորեսցի՞.
կամ որպէս նայն սպան, այնպէս սա-
8 տակեսցի՞։ Պատերազմաւ եւ նախա-
տանօք արձակեսցէ զնոսա. ո՞չ դու էիր
որ խորհէիր խստագնեալ մտօք սպանա-
9 նել զնոսա ոգւով բարկութեամբ։ Վասն
այսորիկ բարձցի անօրէնութիւն Յակո-
բայ. եւ այս է օրհնութիւն նորա, յոր-
ժամ բարձից ի նմանէ զմեղս նորա. ի
ժամանակի յորում մանրեսցեն իբրեւ
զփոշի մանր՝ զամենայն քարինս մեհե-
նաց քոց. եւ մի՛ եւս մնասցեն գործք
պաշտամանցն նոցա, այլ կտորեսցին
10 իբրեւ զմայրի փայտահարաց։ Եւ որ
չէնն մնասցէ՝ եղիցի իբրեւ զհօտ մա-
կաղեալ եւ իբրեւ զխաչն լքեալ, եւ ե-
ղիցի բազում ժամանակս յարօտս երէոց,
եւ անդ հանգիցեն. եւ յետ բազում
ժամանակաց՝ ոչ գտցի ի նմա դեղ դա-
11 լար, զի ցամաքեցաւ։ Կանայք՝ որ դի-
մեալ գայք ի հանդիսէ՝ յառաջ մատիք.՛՛
զի ոչ եթէ ժողովուրդ է՝ յորում գոյ
իմաստութիւն. վասն այնորիկ մի՛ զթասցի
ի նոսա [2]Աստուած որ արարն զնո-
սա. մի՛ որ ստեղծն զնոսա ողորմեսցի
12 նոցա։ Եւ եղիցի յաւուր յայնմիկ, [7]ար-
գել արկցէ՛՛ Տէր ի փոսոյ Գետոյն մին-
չեւ [8]ի կողմանս Ռինոկորուրայ. բայց
դուք մի մի ժողովեսջիք զորդիսն՛՛ Իս-

[1] Եբր. առաջի քո, Տէր։ (18) Յղացաք, երկնեցաք, որպէս թէ ծնաք հողմ. փրկութիւն ոչ արարաք յերկրի. եւ ոչ անկան բնակիչք աշխարհի։ (19) Կեցցեն մեռեալք քո. դիակունք իմ յարիցեն, Զարթիք, եւ ուրախ երգս, բնակիչք հողոյ, զի ցօղ բանջարոց է ցօղ քո, եւ երկիր հանցէ ուրուականս։ [2] Յն. Եբր. ցասումն [3] Եբր. ելանէ ի տեղւոջէ իւրմէ այց առնել անօրէնութեան [4] Եբր. խիստ [5] Եբր. Լեւիաթան [6] Եբր. գինւոյ երգեցէք նմա։ (3) Ես Տէր պահեմ զնա. յամենայն վայրկենի ոռոգեցից զնա, գուցէ առնիցի նմա վնաս. զգիշեր եւ զցերեկ զգուշացայց նմա։ (4) Զայր իմ չասուցն. ո՞ տայր ինձ փուշ եւ մացառ ի պատերազմ, յառնէի ի վերայ նոցա, սրբէի զնոսա միանգամայն։ (5) Եթէ ոչ՝ բուռն հարցէ զզօրութենէ իմմէ, արասցէ խաղաղութիւն ընդ իս, խաղաղութիւն արասցէ ընդ իս։
(6) Առ յապայ արմատասցի Յակոբ, ծաղկեսցի և բողբոջեսցի Իսրայէլ, և լցցեն զերեսս տիեզերաց պտղով։ (7) Միթէ ըստ հարուածոյ հարկանողին եհա՞ր զնա, միթէ ըստ սպանման սպանեալոց ինմանէ սպանա՞ւ։ (8) Յարձակել քո զնա, դատեցար զնա չափով. տարար հողմով սաստկութեան, յաւուր հողմոյն արեւելից։ (9) Վասն այսորիկ սովին քաւեսցի անօրէնութիւն Յակոբայ. և այս ամենայն է ջան բառնալոյ զմեղս նորա, յառնել նորա զամենայն քարինս սեղանոյն իբրեւ քարինս բռոյ մանրեալս, մի՛ կացցեն Աստարովթ եւ պատկերք արեգական։ (10) Զի քաղաք ամուր եղիցի ամայի, բնակութիւն թողեալ լքեալ իբրեւ զանապատ. անդ արածեսցի զուարակ, և անդ մակաղեսցի եւ սպառեսցէ զշառաւիղս նորա։ (11) Ի ցամաքել ոստոց նորա կոտորեսցին, կանայք եկեսցեն, հուր հարցեն ի նոսա.
[7] Եբր. թօթափեսցէ. [8] Եբր. ի հեղեղատէն Եգիպտոսի. բայց դուք մի մի ժողովեսջիք, որդիք

13 րայելի ։ Եւ եղիցի յաւուր յայնմիկ
հարցեն փող աւետաւոր. եւ եկեսցեն
ցրուեալքն յերկրին Ասորեստանեայց,
եւ *կորուսեալք յերկրին Եգիպտացւոց,
եւ երկիր պագցեն Տեառն ի վերայ լե-
րին սրբոյ յԵրուսաղէմ ։

## ԳԼ. ԻԸ

1 Վայ ի պսակդ հպարտութեան [1]վարձ-
կանացդ Եփրեմի. ծաղիկ թօթափեալ
ի փառաց [2]ի վերայ գլխոյ լերինց թանձ-
րացելոց, որ արբեալ էք եւ ոչ˝ ի գին-
2 ւոյ ։ Ահաւասիկ սաստիկ եւ խիստ
[3]բարկութիւն Տեառն˝, իբրեւ զկարկուտ
իջեալ, [4]եւ ոչ գուցէ յարկ˝. եւ իբրեւ
զբռնութիւն հեղեղաց ջրոց բազմաց
որ [5]ողողէ զերկիր. եւ արասցէ հան-
3 գիստ երկրի˝ ձեռօք ։ Եւ կոխան լիցի
պսակն հպարտութեան [6]վարձկանացդ
4 Եփրեմի ։ Եւ եղիցի ծաղիկն յուսոյ թօ-
թափեալ ի փառաց անտի՝ ի վերայ գլխոյ
լերինն բարձու˝, իբրեւ զվաղահասուկն
[7]թզոյ, զոր տեսեալ ուրուք՝ մինչչեւ ի
5 ձեռն առեալ կամիցի կլանել ։ Յաւուր
յայնմիկ եղիցի Տէր զօրութեանց պսակ
[8]յուսոյ զարդեալ ի փառս˝ մնացելոց ժո-
6 ղովրդեանն. [9]Զի մնասցեն ոգւով դա-
տաստանի. եւ դատաստանաւ եւ զօ-
րութեամբ արգելուցու ի ծուլութենէ˝ ։
7 Զի նոքա գինւով մոլորեալ են, մոլո-
րեցան վասն ցքոյն. քահանայն եւ մար-
գարէ յիմարեցան վասն ցքոյ, ընկղմե-
ցան վասն գինւոյ. դանդաչեցին յարբե-
ցութենէ ցքոյն, մոլորեցան՝ [10]զի այն
8 իսկն է յիմարութիւն ։ Նզովք կերիցեն
զխորհուրդն զայն, զի այն խորհուրդ
յագահութենէ է ։
9 Ո՞ւմ պատմեսցուք զչարիսն, ո՞ւմ պատմ
տացուք˝. անջատելո՞ցն ի կաթանէ, հա-
10 տուցելո՞ցն ի ստենէ ։ [11]Նեղութիւնք ի վե-
րայ նեղութեանց. ընկալ, ընկալ կասկա-
11 ծանս ի վերայ կասկածանաց ։ Փոքր մեւս
եւս, փոքր մեւս եւս վասն անարգամութեան
շրթանց, յօտար լեզուս խօսիցին ընդ
12 ժողովրդեանդ ընդ այդմիկ, Եւ ասիցեն
ցդոսա, թէ Այն է հանգիստ քաղցելոյն,
եւ այն բեկումն˝ եւ ոչ կամեցան լսել ։
13 Եւ եղիցի նոցա բանն Տեառն՝ [12]նեղու-
թիւնք ի վերայ նեղութեանց. ընկալ,
ընկալ կասկածանս ի վերայ կասկածա-
նաց ։ Փոքր մեւս եւս, փոքր մեւս եւս՝
մինչեւ˝ գնասցեն, եւ յետս ընդդէմ կոր-
ծանեսցին. [13]եւ խորտակեսցին եւ չար-
չարեսցին եւ սատակեսցին˝ ։
14 Վասն այսորիկ լուարուք զբանն Տեառն,
արք [14]նեղեալք եւ˝ իշխանք ժողովրդ-
15 եանդ այդորիկ յԵրուսաղէմ. Զի ասա-
ցէք, Եգաք ուխտ ընդ դժոխս, եւ ընդ
մահու դաշինս կռեցաք. մրրիկ փոթորկ-
եալ եթէ յարիցէ՝ ոչ եկեսցէ ի վերայ
մեր. զի եդաք սուտ զյոյսն մեր, եւ
16 ստութեամբ ծածկեսցուք ։ Վասն այնո-
րիկ այսպէս ասէ Տէր Տէր. Ահաւասիկ
ես դնեմ [15]ի հիմունս Սիոնի վէմ բազ-
մապատիկ, զընտիր գլուխ անկեան
զպատուականն ի հիմունս նորա˝, եւ որ
17 հաւատասցէ ի նա՝ մի՛ [16]ամաչեսցէ ։ Եւ
եդից զիրաւունս [17]ի յոյս, եւ զողորմու-
թիւն իմ ի կշիռս. եւ որք յուսացեալ
իցեն զուր ի ստութիւն, թէ ոչ
18 հասցէ առ մեզ մրրիկն ։ Եւ ոչ բարձցէ
զուխտն մեր որ ընդ մահուն է, յոյսն
ձեր որ ի˝ դժոխս է՝ մի՛ հաստատեսցի.

---

* Եբր. վտարանդեալք [1]Եբր. արբեցող [2]Եբր. զարդու նորա, որ ի վերայ գլխոյ հովտին պարարտութեան, ջախջախելոց [3]Եբր. Բռնաւոր ի Տեառնէ [4]Եբր իբրեւ զմրրիկ աւերիչ, [5]Եբր. հարցէ զգետնի [6]Եբր. արբեցելոց Եփրեմի ։ (4) Եւ եղիցի ծաղիկն թօթափեալ ի զարդուէ փառաց նորա որ ի վերայ գլխոյ հովտին պարարտութեան [7]Եբր. թզոյ յառաջ քան զամառն [8]Եբր. փայլչութեան եւ թագ փառաց վասն [9]Եբր. Եւ յոգի դատաստանի որոյ նստին ի դատաստան, եւ ի զօրութիւն որոց դարձուցանեն զպատերազմն ի դուռն ։ [10]Եբր. ի տեսեան, գլորեցան ի դատաստանի ։ (8) Զի ամենայն սեղանք լցեալ են փսխածով աղտեղութեան, մինչեւ չմնալոյ տեղի ։

(9) Ո՞ւմ ուսուցէ իմաստութիւն, ո՞ւմ տացէ խելամուտ լինել հանճարոյ

[11]Եբր. Զի խրատ ի վերայ խրատու, խրատ ի վերայ խրատու. հրաման ի վերայ հրամանի, հրաման ի վերայ հրամանի. սակաւ աստ, սակաւ անդ. (11) Զի ստարօտի շրթամբ, եւ ի լեզու այլ խօսեսցի ընդ ժողովրդեանդ ընդ այդմիկ։ (12) Բանզի ասաց ցնոսա, թէ Այն է հանգիստ, հանգուցէք զվաստակեալն, եւ Այս է կազդուրումն. [12]Եբր. խրատ ի վերայ խրատու, խրատ ի վերայ խրատու. հրաման ի վերայ հրամանի, հրաման ի վերայ հրամանի. սակաւ աստ, սակաւ անդ. զի [13]Եբր. անկցին յորսայթ եւ ըմբռնեսցին [14]Եբր. ծաղու [15]Եբր. ի Սիոն հիմն վէմ, վէմ փորձեալ, պատուական անկեան, հիմն հաստատնոյ [16]Եբր. աճապարեսցէ ի փախուստ [17]Եբր. ի չափ, եւ զարդարութիւն ի կշիռս. Եւ տարցի կարկուտ զապաւէն սութեան, եւ զտեղին թաքստեան ջուրք ողողեսցեն ։ (18) Եւ բարձցի ուխտն ձեր որ ընդ մահուն է, եւ դաշն ձեր որ ընդ

զի մրրիկ փոթորկեալ եթէ գայցէ ի վե-
19 րայ, եղիջիք նմա ի կոխումն։ Զի յոր-
ժամ անցանիցէ՝ առցէ զձեզ. յառաւօտէ
յառաւօտ անցցէ, ի տուէ եւ [1]ի գիշերի
20 եղիցի կասկած չարեաց։ Ուսարուք
լսել, նեղեալքդ. մարտնչել եւս ոչ կա-
րեմք, քանզի տկարացաք ի ժողովելն
միում իբրեւ զխառն ամպարշտաց։
21 Յարիցէ Տէր ի ձորն Գաբաւոնացւոց լի
բարկութեամբ, գործեսցէ զգործ իւր
գործ դառնութեան. զի սրտմտութիւն
նորա օտարաբար վարեսցի, եւ դառ-
22 նութիւն նորա օտարաբար հասցէ։ Եւ
դուք մի՛ ցնծայք, *եւ՝ մի՛ զօրասցին
կապանք ձեր. զի [2]իրս հատուածս եւ
համառօտս լուայ ի Տեառնէ, Տէր՝ զօ-
րութեանց զոր առնելոց է ի վերայ ա-
մենայն երկրի։
23 Ունկն դիք եւ լուարուք բարբառոյ
իմոյ, անսացէք եւ լուարուք բանից ի-
24 մոց. Միթէ զօ՞րն ամենայն հերկիցէ որ
հերկէն [3]կամ թէ սերմն յառաջագոյն
ցանիցէ, մինչեւ զերկիրն գործեալ իցէ։
25 Ո՞չ ապաքէն նախ կակղէ զերեսս նորա,
եւ ապա սերմանէ փոքր մի արջնդեղ
եւ չաման. եւ ապա սերմանեսցէ ցոր-
եան եւ գարի, [4]կորեակ եւ հաճար ի
26 սահմանս իւր։ [5]Եւ խրատեսցիս դու ի-
րաւամբք Աստուծոյ քո, եւ ուրախ ե-
27 ղիցես։ Զի ոչ եթէ խստիւ ինչ սրբի
արջնդեղն, եւ ոչ զանիւ կամնասայլին
ածեն ի վերայ չամանոյն. այլ գաւա-
զանաւ թօթափի արջնդեղն, եւ չամանն
28 [6]հացիւ ուտի։ Զի ոչ եթէ յաւիտեան
բարկանայցեմ ձեզ, եւ ոչ ձայն դառ-
29 նութեան իմոյ կոխիցէ զձեզ։ Եւ այս
նշանք եկին ի Սաբաւովթ Տեառնէ. արդ
խորհեցարուք՝ բարձէք ի ձէնջ զընդու-
նայն մխիթարութիւնն ձեր։

Գլ. ԻԹ

1 Վա՜յ քեզ, Արիէլ [7]քաղաք, Արիէլ՝ զոր
Դաւիթն պաշարեաց, զի ամօքն ամբո-
խեսցին. ժողովեցէք արմտիս եւ կե-
րայք ամ յամէ, եւ կերիջիք Մովաբու
2 հանդերձ։ Զի նեղեցից զԱրիէլ, եւ ե-
ղիցի զօրութիւն եւ մեծութիւն նորա
3 ինձ. Եւ պաշարեցից զքեզ՝ որպէս եւ
Դաւիթն, եւ ածից զքեւ պատնէշ, եւ
կանգնեցից շուրջ զքեւ [8]աշտարակս։
4 Եւ խոնարհեսցին յերկիր բանք քո, եւ
պատգամք քո ընդ գետին մտցեն. եւ
եղիցի իբրեւ զձայնաձայնաց բարբառ քո,
եւ ի յատակս բարբառն քո տկարասցի։
5 Եւ եղիցի իբրեւ զփոշի անուոյ մեծու-
թիւն ամպարշտաց, եւ իբրեւ զունդ
մաղեալ բազմութիւն զրկողացն քոց
6 եւ եղիցի որչափ յական թօթափել։ Ի
Սաբաւովթ Տեառնէ այցելութիւն՝ շարժ-
մամբ եւ որոտմամբ եւ մեծաձայն բար-
բառով, մրրիկ փոթորկեալ եւ բոց հրոյ
7 որ ուտիցէ։ Եւ եղիցի, որպէս որ զի
տեսանիցէ երազ ի տեսլեան գիշերոյ,
մեծութիւն ամենայն հեթանոսաց յար-
ձակելոց ի վերայ [9]Երուսաղեմի եւ ա-
մենայն ժողովելոցն ի վերայ նորա, եւ
8 որ նեղեցինն զնա։ Եւ եղիցին՝ որպէս
որք յերազի քաղցեալ իցեն եւ ուտի-
ցեն, եւ իբրեւ յառնիցեն՝ զուր է տե-
սիլն. եւ զոր օրինակ ծարաւի որ իցէ
յերազի եւ ըմպիցէ, եւ յառնիցէ՝ եւ
զարձեալ ծարաւեալ, ի զուր յուսացաւ
անձն նորա. այնպէս եղիցի մեծութիւն
ամենայն հեթանոսաց, որ զօրաժողով
եղեն [4]ի վերայ Երուսաղեմի եւ՝ ի վե-
9 րայ լերին Սիոնի։ Զարմացարուք, յի-
մարեցարուք, թմրեցարուք, եւ ա-
ռաւել թմրեցարուք, որ արբեալքդ էք
10 եւ ոչ ի գինւոյ, [10]եւ ոչ ի ցքւոյ։ Զի

---

[1] Եբր. ի գիշերի. և եղիցի գըրգիւն իմանալ լսել զհամբաւն. (20) Զի կարճ է անկողինն ի տարածել զանձն, և ծածկոյթն անձուկ է յամփոփել զանձն։ (21) Զի իբրեւ ի լեառն Փարասին յարիցէ Տէր, որպէս ի ձորն Գաբաւոնի բարկասցի. գործել զգործ իւր, օտարոտի գործ նորա, եւ առնել զարար իւր. օտար արար նորա։ (22) Եւ արդ մի՛ լինիք ծաղրածուք, զի [2]Եբր. սպառումն հակիրճ լուայ ի Տեառնէ՝ ի Տեառնէ [3]Եբր. ի վարել բացցէ եւ մանրեսցէ զհող իւր հանապա՞զ [4]Յեբր. պակասէ [5]Եբր. Զի թեքեսցէ զնա ուղիղ, Աստուած նորա ուսուսցէ նմա։ [6]Եբր. ցորեն (28) Ցորեան կասու, այլ ոչ եթէ յաւիտեան ծեծելով ծեծէ զնա եւ մանրէ զնա անիւ կամնասայլին, և ձիովք իւրով ոչ կասու զնա։ (29) Այս եւս ի Տեառնէ զօրութեանց ել. սքանչելի ի խորհրդեան, մեծաքանչ յիմաստութեան։

[7] Եբր. Արիէլ, քաղաք ուր բնակեցաւ Դաւիթ. յաւելէք տարի ի վերայ տարւոյ. տօնք բոլորեսցին։ (2) Եւ նեղեցից զԱրիէլ, եւ եղիցի լալիւն եւ սուգ. եւ եղիցի ինձ իբրեւ զԱրիէլ (զոհանոց) Աստուծոյ։ (3) Եւ եդից բանակ շուրջանակի ընդդէմ քո [8]Եբր. ամրոցս։ (4) Եւ խոնարհեսցիս. յերկրէ խօսեսցիս, եւ բան ի հողոյ խոնարհ եղիցին բանք քո. եւ եղիցի իբրեւ հարցկի յերկրէ բարբառ քո, եւ ի հողոյ բանք քո հծծեսցէ։ (5) Եւ եղիցի իբրեւ փոշի մանրամաղ ամբոխ օտարաց քոց [9]Եբր. Արիէլի
[10]Եբր. դանդաչէք՝

արբոյց ձեզ Տէր ոգի յիմարութեան. եւ
խցցէ զաչս ձեր եւ զմարգարէից ձերոց
եւ զիշխանաց ձերոց եւ զծածկատեսայն
11 ձերոց։ Եւ եղիցին ձեզ պատգամքս այս
ամենայն իբրեւ զբանս թղթոյ կնքե-
լոյ, զոր իբրեւ տայցեն ցայր մի գրա-
գէտ եւ ասիցեն ցնա, Ընթերցիր զայդ.
եւ ասիցէ, Ոչ կարեմ ընթեռնուլ զի
12 կնքեալ է։ Եւ տացի նոյն գիր ի ձեռս
առն՝ որ ոչ գիտիցէ գիրս, եւ ասասցեն
ցնա, Ընթերցիր զայդ. եւ ասիցէ, Ոչ
13 գիտեմ դպրութիւն։ Եւ ասէ Տէր, [1]Մերձ
է առ իս ժողովուրդս այս բերանով իւրով,
եւ շրթամբք իւրեանց պատուեն զիս.
եւ սրտիւք իւրեանց հեռացեալ մե-
կուսի են յինէն. [2]զուր պաշտեն զիս,
ուսուցանեն զպատուէրս մարդկան եւ
14 զվարդապետութիւնս՝։ Վասն այնորիկ
ահաւասիկ ես յաւելից [3]փոփոխել զժո-
ղովուրդդ զայդ. եւ փոփոխեցից զդոսա.
եւ կորուսից զիմաստութիւն իմաստնոց,
եւ զխորհուրդս խորհրդականաց արհա-
մարհեցից. վա՜յ այնոցիկ՝ որ խորհին
խորհուրդս խորին՝ եւ [4]ոչ Տերամբ՝։
15 Վա՜յ այնոցիկ որ խորհին խորհուրդս ծա-
ծուկս[4], եւ եղիցին ընդ խաւար գործք
նոցա, եւ ասիցեն թէ Ո՞ տեսանիցէ
զմեզ, եւ ո՞ գիտասցէ [5]զինչ գործեմք։
16 Ո՞չ ապաքէն իբրեւ զկաւ բրտի համար-
եալ իցէք՝։ միթէ ասիցէ՞ ստեղծուածն
ցստեղծիչն իւր, թէ Ոչ դու զիս ստեղ-
ծեր. կամ արարածն ցարարիչն թէ Ոչ
[6]իմաստութեամբ արարեր զիս՝։
17 [7]Ոչ եւս յետ սակաւ ժամանակի, եւ
եղիցի Լիբանան իբրեւ [8]զլեառն Քերմէլ,
18 եւ Քերմէլ՝ յանտառ համարեսցի։ Եւ
լուիցեն յաւուր յայնմիկ խուլք զբանս
գրոյն [9]այնորիկ. եւ որք ի խաւարին եւ
ի միգին իցեն՝ տեսցեն աչք կուրացե-
19 լոցն։ Եւ ցնծասցեն աղքատք յազագս
Տեառն ուրախութեամբ, եւ [10]անյոյսքն
20 ի մարդկանէ լցցին [11]ուրախութեամբ։ Պա-
կասեաց՝ անօրէնն, եւ կորեաւ ամբար-
տաւանն. եւ սատակեցան [12]անօրէնք ի
21 չարիս, Եւ որք առնեն մեղանչել մարդ-
կան բանիւք. [9]ամենայն յանդիմանչացն
ի դրունս գնէին զգայթագղութիւն, եւ
խոտորէին անիրաւութեամբ զիրաւունս։
22 Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր [13]ի
վերայ տանն Յակոբայ զոր ընտրեացն
յԱբրահամէ. ոչ այժմ ինչ ամաչեսցէ Յա-
կոբ, եւ ոչ այժմ զերեսս այլագու-
23 նեսցէ Իսրայէլ՝. Այլ յորժամ տեսցեն
որդիք նորա զգործս իմ, վասն իմ սուրբ
արասցեն զանուն իմ, եւ սուրբ արասս-
ցեն զՍուրբն Յակոբայ, եւ երկիցեն
24 յԱստուծոյն Իսրայելի։ Եւ ծանիցեն մո-
լորեալք հոգւով զիմաստութիւն, եւ
տրտնջօղք ուսցին [14]զհնազանդութիւն,
եւ լեզուք թոթովախօսք ուսցին խօ-
սել զխաղաղութիւն՝։

## ԳԼ. Լ

1 Այսպէս ասէ Տէր. Վա՜յ ձեզ, որդիք ա-
պըստամբք, զի խորհեցարուք խորհուրդ
եւ ոչ ինեւ, եւ դաշինս կռեցէք՝ եւ ոչ
իմով Հոգւով, յաւելուլ մեղս ի վերայ
2 մեղաց. Որ գնայիք իջանել յերկիրն Ե-
գիպտացւոց, եւ զիս ոչ հարցանէիք,
գտանել օգնականութիւն ի Փարաւոնէ,
3 եւ թիկունս առնել զԵգիպտացիսն։ Եւ
եղիցին ձեզ թիկունք Փարաւոնի յամօթ,
եւ յուսացելոց յԵգիպտացիսն նախա-
4 տինք. Զի են յերկրին Տայանու իշխանք
5 [15]հրեշտակք չարք. Զուր ջանան առ ժո-
ղովուրդն՝ որ ոչ լինիցի դոցա չահ յօգ-
նականութիւն. ոչ յօգուտ, այլ յամօթ
եւ ի նախատինս։
6 [16]Տեսիլ չորքոտանեաց [17]յանապատի, ի
նեղութեան եւ յանձկութեան՝. առեւծ
եւ կորիւն առիւծու, եւ ի նոցանէն իժք
եւ կորիւնք իժից թռչունք, որ բարձ-
եալ բերեն իշոց զգանձս իւրեանց, եւ
լցեալ ուղտուց զմեծութիւն իւրեանց.

---

[1]Եբր. Որովհետեւ մերձ [2]Եբր. և երկեւղ նոցա յինէն է պատուէր ուսուցեալ ի մարդկանէ [3]Եբր. առնել ընդ ժողովրդեանդ ընդ այդմիկ իրս զարմանալիս եւ սքանչելիս, եւ կորիցէ իմաստութիւն իմաստնոց նորա, եւ խորհուրդ խորհրդականաց նոցա թաքիցէ. [4]Եբր.—յէջէն յա—ե-ը—, ի Տեառնէ [5]Եբր. զմեզ։ (16) Ո՜վ կամակորութեան ձերում. միթէ իբրեւ զկաւ՞ համարեսցի բրուտ. [6]Եբր. եղեւ խելամուտ [7]Եբր. Ո՞չ [8]Եբր. զարտ պտղաբեր, եւ արտ պտղաբեր [9]Յեբր. պ—յ—ե [10]Եբր. մուրացիկք

[11]Եբր. ուրախութեամբ ի Սուրբն Իսրայէլի. (20) Զի պակասեաց [12]Եբր. անօրէնք որ հսկեն [13]Եբր. որ փրկեացն զԱբրահամ՝ ի վերայ տանն Յակոբայ. Ոչ եւս ամաչեսցէ Յակոբ, և ոչ եւս երեսս նորա այլագունեսցին [14]Եբր. զգիտութիւն։ [15]Եբր. նորա եւ հրեշտակք նորա հասին ի Հանէս։ (5) Ամենեքին յամօթ եղեն՝ վասն ժողովրդեանն [16]Կամ, Բեռն [17]Եբր. հարաւոյ, յերկիրն նեղութեան եւ անձկութեան

առ ազգ մի՝ որ ոչինչ օգուտ լինիցի
նոցա յօգնականութիւն, [1]այլ յամօթ եւ
7 ի նախատինս՟։ Եգիպտացիքն որ զուր
եւ տարապարտ օգնիցեն ձեզ, [2]պատ-
մեա նոցա եթէ ի զուր է այդ մխի-
8 թարութիւն ձեր։ Արդ նիստ եւ գրեա
ի տախտակի եւ ի գիրս, զի եղիցի այդ
յաւուր յետում եւ ի ժամանակս յաւի-
9 տենից, Թէ՟ ժողովուրդ անհաւան [3]է,
եւ որդիք սուտք. [4]եւ ոչ կամեցան
10 լսել զօրէնս [5]Աստուծոյ։ Որք ասէին
ցմարգարէսն, թէ Մի՛ պատմէք մեզ.
այլ խօսեցարուք ընդ մեզ եւ պատմե-
11 ցէք մեզ այլ մոլորութիւն. Եւ դարձու-
ցէք զմեզ ի ճանապարհէդ յայդմանէ, եւ
ի բաց արարէք ի մէնջ զշաւիղդ զայդ.
եւ հանէք ի մէնջ զօրէնս Աստուծոյ Իս-
12 րայէլի՟։ Վասն այսորիկ այսպէս ասէ
[1]Տէր՝ Սուրբն Իսրայէլի, Փոխանակ զի
անարգեցէք զուք զբանսդ զայդոսիկ, եւ
յուսացարուք ի ստութիւն [6]մնոտի, եւ
զի տրտնջեցէք՝ եւ յուսացարուք ի բանդ
13 յայդ՟։ Վասն այնորիկ եղիցին ձեզ մեղքդ
այդոքիկ իբրեւ [7]զպարիսպ կործանեալ
առժամայն ամուր քաղաքի առեալոյ՟, ո-
րում յանկարծակի հասանիցէ կործա-
14 նումն։ Եւ կործանումն նորա եղիցի
իբրեւ զբեկումն խեցեկէն անօթոյ բրուտի
մանր խորտակելոյ, զի մի՛ ոք գտանիցէ
ի նմանէ որով հուր բառնայցէ՝ կամ ո-
րով մարթիցէ առնուլ սակաւ մի ջուր։
15 Զի այսպէս ասէ Տէր Տէր՝ Սուրբն Իս-
րայէլի, [8]Յորժամ դարձցիս եւ յոգւոց
հանիցես, յայնժամ կեցցես, եւ գիտա-
ցես թէ ուր իցես. զի յուսացեալ էիր
դու ի սնոտիսն, սնոտի եղեւ եւ՟ զօ-
րութիւն ձեր. եւ ոչ կամէիք լսել.
16 Այլ ասէիք, [9]Երիվարօք մերովք՟ փա-
խիցուք. վասն այսորիկ փախստականք
լինիջիք. եւ ասէիք, Երագ երիվարօք
[1]մերովք փախիցուք. վասն այսորիկ
երագագոյնք [1]քան զձեզ՟ եղիցին որ հա-
17 լածեսցեն զձեզ։ Զի ի միոջէ բարբառոյ
հազարք փախիցեն, եւ ի բարբառոյ
հնգից բազումք փախիցեն. մինչեւ
մնասջիք իբրեւ զծող ցցեալ ի վերայ
լերին, եւ իբրեւ զկոթող կանգնեալ ի
18 վերայ բլրոյ։ Եւ դարձեալ կանխեսցէ
[10]Աստուած գթալ ի ձեզ, եւ վասն այ-
սորիկ բարձրասցի ողորմել ձեզ. զի
[11]դատաւոր Տէր Աստուած մեր է՟, ե-
րանի ամենեցուն ոյք սպասեն նմա։
19 Զի ժողովուրդ [1]սուրբ ի Սիոն, բնա-
կեսցէ [12]եւ Երուսաղէմ լալով ելաց՝
եթէ Ողորմեաց ինձ՟. ողորմեսցի քեզ՝
ձայնի աղաղակի քում, [13]իբրեւ ետես՝
20 եւ լուաւ քեզ՟։ Եւ տացէ քեզ Տէր հաց
նեղութեան եւ ջուր կարօտանաց, եւ
ոչ եւս [14]մերձեսցին ի քեզ որ մոլորե-
ցուցանէին զքեզ, զի աչք քո տեսցեն
21 ի մոլորեցուցիչսն՟ քո. Եւ ականջք քո
լուիցեն բանս [15]զհետ մոլորեցուցչացն
քոց. որք ասէին՝ եթէ Այս է ճանա-
պարհ, եւ գնասցուք ընդ սա, կամ թէ
22 յաջ կամ թէ յահեակ։ Եւ զարչեցուս-
ցես զկուռսն զարծաթապատս եւ զոս-
կիապատս, մանրեսցես զնոսա եւ հո-
սեսցես իբրեւ զջուր դաշտանաց, եւ
23 իբրեւ զաղբ մերժեսցես զնոսա՟։ Յայն-
ժամ եղիցի անձրեւ սերմանեաց երկրին
քում, եւ հաց արդեանց երկրի քո ե-
ղիցի յագուրդ եւ ի պարար. եւ ճարա-
կեսցին խաշինք քո յաւուր յայնմիկ ի
տեղւոջ պարարտութեան եւ յանդորրու.
24 [16]Զուարակք ձեր եւ եզինք՟ որ գործեն
զերկիր՝ կերիցեն [17]յարդ խառնեալ ընդ
25 գարի, հոսեալ ի կալոյ՟։ Եւ եղիցին ի
վերայ ամենայն լերանց բարձանց եւ

---

[1]Յեբր. զոլոոե [2]Եբր. վասն այսորիկ կոչեցի նմա, Ամբարտաւան որ նստի։ (8) Արդ՝ մուտ, գրեա զայս ի տախտակի առաջի նոցա. եւ դրոշմեա ի գիր, զի եղիցի ի վերջնում աւուր ի վկայութիւն յաւիտեանս։ (9) Զի [3]Եբր. է նա [4]Եբր. որդիք որ [5]Եբր. Տեառն։ (10) Որք ասէին ցտեսանողսն՝ Մի՛ տեսանէք, և ցհայեցողսն՝ Մի՛ հայիք վասն մեր ուղիղս. խօսեցարուք մեզ ողոքանս, տեսէք պատրանս. (11) Յետս կացէք ի ճանապարհէդ, խոտորեցարուք ի շաւղէդ, բարձէք յերեսաց մերոց զՍուրբն Իսրայէլի։ [6]Եբր. եւ ի թիւրութիւն, եւ յեցարուք յայն [7]Եբր. զհերձուած որ անկանելոց է՝ ուռուցեալ ի պարսպի բարձու [8]Եբր. Ի դառնալն եւ ի հանգչել՝ կեցջիք. ի հանդարտութեան եւ յապաւինութեան եղիցի [9]Եբր. Ոչ, երիվարօք

[10]Եբր. Տէր [11]Եբր. Աստուած դատաստանի է Տէր [12]Եբր. յԵրուսաղէմ. լալով մի՛ լայցես. ողորմելով [13]Եբր. ի լսել ձայն, տացէ քեզ պատասխանի [14]Եբր. հեռասցին ուսուցիչք քո, և աչք քո տեսցեն զուսուցիչս [15]Եբր. ի թիկանց քոց որ ասէ, Այս է ճանապարհ, գնացէք ընդ սա, յորժամ յաջ կամ յահեակ խոտորիցիք։ (22) Եւ պղծեսցես զծածկոյթս կռոց քոց արծաթեղինաց, եւ զզարդս ձուլածոյից քոց ոսկեղինաց. և ընկենուցուս զնոսա իբր զկապերտս դաշտանի. Ել՝ արտաքս, ասասցես ցիւրաքանչիւրն։ [16]Եբր. Եւ եզինք եւ էշք [17]Եբր. ճարակ ընտիր, որբեալ թիով եւ հեծանոցաւ

ի վերայ ամենայն բլրոց բարձրաւանդակաց՝
[1]ջուր բղխեալ՝՝, յաւուր յայնմիկ յորժամ
կորիցեն բազումք եւ կործանեսցին աշ-
26 տարակք ։ Եւ եղիցի լոյս լուսնի իբրեւ
զլոյս արեգական, եւ լոյս արեգական
եւթնպատիկ եղիցի՝ իբրեւ զլոյս ա-
ւուրցն եւթանց, յաւուր յորում բժշ-
կեսցէ Տէր զբեկումն ժողովրդեան իւրոյ,
եւ զցաւս վիրաց [2]քոց բժշկեսցէ ։
27 Ահաւասիկ անուն Տեառն գայ [3]յա-
մայր ամս՝ յետ բազում ժամանակաց՝՝,
վառեալ բարկութեամբ եւ [4]լի փառօք.
բանք շրթանց նորա եւ բանք բերանոյ
նորա լի բարկութեամբ. եւ բարկու-
թիւն սրտմտութեան՝՝ նորա իբրեւ զհուր
28 կերիցէ. Եւ հոգի նորա իբրեւ զջուր
ձորալից պարանոցաթաղ յորդեսցէ. [5]եւ
բաժանեսցի խռովեցուցանել զազգս վասն
անօտի մոլորութեանն. եւ հալածեսցէ
զնոսա մոլորութիւնն, եւ հասցէ նոցա
29 յանդիման նոցին ։ Միթէ հանապազ
պարտ իցէ ձեզ ուրախութեամբ մտա-
նել ի սրբութիւնս իմ, յամենայն
ժամ տօնիւք եւ ուրախութեամբ եւ
փողո՞վք մտանել ի լեառն Տեառն՝ առ
30 Աստուած Սուրբն Իսրայելի ։ Եւ լսելի
արասցէ՝՝ զփառս բարբառոյ իւրոյ, եւ
[6]զսրտմտութիւն բազկի իւրոյ ցուցցէ
բարկութեամբ՝ եւ սրտմտութեամբ եւ
բոցով որ ուտիցէ. [7]եւ սաստիկ բար-
կութեամբ հրացանից, եւ ջրով եւ կարկ-
տիւ մխանպամայն հոսելով բռնութեամբ՝՝ ։
31 Զի ի բարբառոյ Տեառն ընկճեսցին Ա-
սորեստանեայք, հարուածովքն զոր հար-
32 կանիցէ զնոսա ։ Եւ [8]եկեսցէ նմա շուրջ
յօգնականաց իւրոց՝ յոր կողմ եւ յու-
սացեալ իցէ. գի նոքա փողովք եւ
թմբկաւ եւ պէսպէս պատերազմաւ փոխ-
փոխ մարտիցեն ընդ նմա, եւ դու ոչ
յառաջագոյն քան զաւուրսն պահան-
33 ջեսցիս ։ Իսկ արդ եւ քե՞զ պատրաստ-
եալ իցէ թագաւորել, ի վերայ ձորոյն
խորոյ փայտ դիզեալ, հուր եւ փայտա-
կոյտ բազում վառեալ. սրտմտութիւն
Տեառն իբրեւ զձոր լի ծծմբով բորբոքեալ՝՝ ։

## ԳԼ. ԼԱ

1 Վա՜յ այք իջանեն յԵգիպտոս վասն օգ-
նականութեան. [9]որ ի հեծեալս՝՝ եւ ի
կառս յուսացեալ իցեն՝ թէ բազումք են,
եւ [10]բազմութիւն երիվարաց՝՝ յոյժ. եւ
ոչ էին յուսացեալ ի Սուրբն Իսրայելի,
2 եւ [11]զԱստուած ոչ խնդրեցին ։ Եւ նա
իմաստուն էր՝ եւ ած էր [12]ի վերայ նոցա
չարիս. եւ բան նորա ոչ անարգեսցի՝՝.
եւ յարիցէ ի վերայ տանց մարդոց չա-
րաց, եւ ի վերայ [13]անօտի յուսոյն նոցա.
3 Յայր Եգիպտացի՝ եւ ոչ յԱստուած, ի
մարմինս երիվարաց՝ եւ ոչ գոյր օգնա-
կանութիւն՝՝. այլ Տէր արկցէ ի վերայ
նոցա զձեռն իւր, եւ տաժանեսցին օգ-
նականքն, եւ կործանեսցին օգնեալքն
ի նոցանէն. եւ առ հասարակ ամենե-
4 քեան սատակեսցին ։ Զի այսպէս ասաց
ցիս Տէր, թէ Զոր օրինակ գոչեսցէ ա-
ռեւծ եւ կորիւն առիւծու [14]յորս յոր հա-
սանիցէ, կոչեսցէ ի վերայ եւ լցցէ զլերինս
բարբառով իւրով, եւ ի պարտութիւն
մատնեսցին, եւ ի սաստկութենէ սրտ-
մտութեան նորա հալեսցին՝՝, այնպէս
իջցէ Տէր զօրութեանց [15]ի լեառն Սիոն,
5 եւ ի վերայ լերանց՝՝ նորա ։ Իբրեւ զթռ-
չունս [16]թռուցեալս, այնպէս հովանի
լիցի Տէր զօրութեանց ի վերայ Երու-
սաղեմի. ի թիկունս լիցէ, օգնեսցէ եւ
փրկեսցէ եւ կեցուսցէ ։
6 Դարձարուք [17]այք խորհիք խորհուրդս

---

[1] Եբր. գետք գնացից ջուրց [2] Եբր. նորա [3] Եբր. ի հեռաստանէ [4] Եբր. սաստկութեամբ բոցոյ. շրթունք նորա լի բարկութեամբ, եւ լեզու [5] Եբր. մաղել զազգս մաղիւ ունայնութեան, եւ եղիցի սանձ մոլորութեան ի կզակս ժողովրդոց ։ (29) Երգ եղիցի ձեզ իբրեւ ի գիշերի խմբելոյ տօն, եւ ուրախութեամբ սրտի որպէս որ գնայցէ սրնգաւ մտանել ի լեառն Տեառն առ Վէմն Իսրայելի ։ (30) Եւ լսելի արասցէ Տէր [6] Եբր. զհարուած [7] Եբր. հեղեղաւ, մրրկաւ և քարիւ կարկտի [8] Եբր. եղիցի ամենայն հարուած գաւազանին սահմանելոյ զոր ածցէ Տէր ի վերայ նորա, թմբկաւ եւ քնարաւ. եւ մարտիւ սասկութեան մարտիցէ ընդ նմա ։ (33) Զի պատրաստեալ է ի վաղուց Տոփեթ եւ պատրաստեալ է վասն թագաւորին. խորեաց, ընդարձակեաց. շեղջ նորա հուր եւ փայտ բազում, շունչ Տեառն որպէս հեղեղ ծծմբոյ բորբոքելոյ ի նմա ։ [9] Եբր. եւ յերիվարս յեցեալ [10] Եբր. ի հեծեալս զի հզօրք են [11] Եբր. զՏէր [12] Եբր. չարիս, եւ զբան իւր ոչ դարձուցէ [13] Եբր. օգնութեանն որոց գործեն զանօրէնութիւն ։ (3) Եւ Եգիպտացիք մարդիկ են եւ ոչ Աստուած, եւ երիվարք նոցա մարմին եւ ոչ հոգի [14] Եբր. յորս իւր, զոր ժողովեսցէ ի վերայ նորա լրութիւն հովուաց, ի բարբառոյ նոցա ոչ խռովեսցի, եւ յամբոխէ նոցա ոչ խոնարհեսցի [15] Եբր. ի պատերազմ ի լեառն Սիոն, եւ ի վերայ բլրոյ [16] Եբր. որ ծածկեն զձագս իւրեանց [17] Եբր. առ Այն յորմէ յետս կացէք չարաչար

խորհիս եւ զանօրէնս՝՝, որդիք Իսրայէլի։
7 Զի յաւուր յայնմիկ բարձցեն [1]մարդիկ
զձեռագործս իւրեանց՝՝ զարծաթեղէնս
եւ զոսկեղէնս՝ զոր արարին ձեռք նոցա
8 ի մեղս։ Եւ անկցի Ասորեստանեայն, ոչ
սրով առն, եւ ոչ սուր մարդոյ կերիցէ
զնա. եւ ի փախուստ դարձցի՝ [2]ոչ յե-
րեսաց սուսերի, եւ երիտասարդք նո-
9 րա [3]ի պարտութիւն մատնեսցին։ Եւ
եղիցին վիմարգելք իբրեւ զորմարգելս.
եւ ի պարտութիւն մատնեսցին, եւ որ
փախիցէն՝ ըմբռնեսցի։ Այսպէս ասէ
Տէր. Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն,
եւ ընտանեակք իւրեն նորա յԵրու-
սաղէմ։՝՝

ԳԼ. ԼԲ

1 [4]Զի ահաւասիկ թագաւոր արդար՝՝ թա-
գաւորեսցէ, եւ իշխանք իրաւամբք սի-
2 րեսցեն։ Եւ եղիցի մարդն [5]որ թաքու-
ցանիցէ զբանս իւր, թաքիցէ իբրեւ ի
ջրոյն սաստկութենէ. եւ եղիցի Սիոն
իբրեւ գետ յորդեալ փառաւոր ի ծա-
3 րաւուտ երկրի։ Եւ ոչ եւս եղիցին
յուսացեալ ի մարդիկ, այլ տացեն զա-
4 կանջս առ ի լսել։ Եւ սիրտք տկարաց
անսայցեն ի լսել՝՝. եւ լեզուք թոթովք՝
արագ արագ ուսցին խօսել [6]զխաղա-
5 ղութիւն։ Եւ ոչ եւս ասասցեն ցյիմարն՝
լինել նոցա իշխան. եւ ոչ եւս ասաս-
ցեն սպասաւորեայք քո՝ թէ Լռեա լեր՝՝
6 Քանզի յիմարն յիմարութիւն խօսեսցի,
եւ սիրտ նորա զնանրութիւն խորհեսցի.
կատարել զանօրէնութիւն, եւ խօսել
առ [7]Աստուած զմոլորութիւն. ցրուել
զանձինս քաղցեալս, եւ զանձինս ծա-
7 րաւեալս՝ ունայնս արձակել։ Զի խոր-
հուրդք չարաց՝՝ անօրէնս խորհին ապա-
կանել զխոնարհս բանիւք անիրաւու-
թեամբ, [8]եւ ցրուել զբանս անանկաց ի
8 դատաստանի. Իսկ ուղիղք իմաստունս
խորհեցան, եւ խորհուրդն այն կայ՝ մնայ։
9 Կանայք մեծատունք՝՝ արիք եւ լուա-
րուք բարբառոյ իմոյ. եւ [9]դստերք,
կասկածանօք լուարուք զբանս իմ։
10 Յաւուրս տարւոյ յիշատակ լինիջիք
ցաւօք եւ կասկածանօք՝՝ նուաղեսցին
կութք, [2]դադարեսցեն սերմանք եւ այլ
11 ոչ եւս եկեսցեն։ Զարհուրեցարուք,
տրտմեցարուք, մերկացարուք, կողոպտե-
12 ցարուք, քրձազգածք եղերուք։ Կոծե-
ցարուք ի վերայ ստեանց վասն անդոցն
ցանկալեաց եւ վասն այգեացն բերոց։
13 Յերկրի ժողովրդեան իմոյ փուշ եւ խոտ
բուսցի եւ յամենայն [10]ապարանից ու-
րախութիւն բարձցի. քաղաքիդ մեծա-
14 ցելոյ ապարանք լքեալք. Զմեծութիւն
քաղաքիդ լքցեն եւ զտունս ցանկալիս.
եւ եղիցին աւանք քո՝՝ այրք յաւիտե-
նից, ուրախութիւն ցռուց եւ ճարակք
15 հօտից։ Մինչեւ եկեսցէ ի վերայ [11]ձեր
Հոգի ի բարձանց. եւ եղիցի անապատն
[12]ի Քերմէլ, եւ [12]Քերմէլ յանտառ համա-
16 րեսցի. Եւ հանգիցեն իրաւունք յանա-
պատի. եւ արդարութիւն ի [12]Քերմէլ
17 բնակեսցէ։ Եւ եղիցին գործք արդարու-
թեան [13]խաղաղութեամբ. եւ կալցի ար-
դարութիւն զհանգիստ. եւ յուսացեալքն
18 եղիցին՝՝ մինչեւ յաւիտեան։ Եւ բնա-
կեսցէ ժողովուրդ իմ [14]ի քաղաքին խա-
ղաղութեան, եւ բնակեսցէ յուսով, եւ
19 հանգիցեն մեծութեամբ. Այլ կարկուտ
եթէ իջանիցէ, ոչ ի ձեր վերայ եկեսցէ.
եւ եղիցին որ բնակեալ իցեն յանտա-
ռին, յանհոգս իբրեւ զայնոսիկ որք

[1] Եբր. այր իւրաքանչիւր զկուռս [2]Յ Եբր. պախեաւ [3] Եբր. եղիցին հարկատու։ (9) Եւ վիմութիւն իւր առ երկիւղի անցցէ, և երկիցեն ի դրօշէ իշխանք նոցա, ասէ Տէր, որոյ հուր նորա ի Սիոն, և հնոց նորա յԵրուսաղէմ։ [4]Եբր. Ահաւասիկ թագաւոր արդարութեամբ [5]Եբր. իբրեւ թաքստոց ի հողմոյ, և պատսպարան ի հեղեղէ. որպէս գնացք ջուրց յերաշտ, որպէս հովանի վիմի մեծի ի ծարաւուտ երկրի։ (3) Եւ ոչ շլասցին աչք որոց տեսանեն, և ականջք լսողաց անսայցեն։ (4) Եւ սիրտ փութացելոց իմանալու լիցի գիտութեան [6]Եբր. յստակս։ (5) Եւ ոչ եւս կոչեսցի ժանտն աղնուաբարոյ, եւ ագահն մի՛ ասասցի առատաձեռն։ [7]Եբր. Տէր զանզգամութիւն, զրկել զանձինս քաղցեալս եւ զըմպելի ծարաւելոյն տացէ սպառել։ (7) Եւ խորհուրդք ագահաց չար են.

[8]Եբր. մինչ կարօտեալն խօսի իրաւամբք։ (8) Իսկ որ առատաձեռն է՝ առատս խորհի, եւ կայ մնայ յառատաձեռնութեան։
(9) Կանայք բարեկեցիկք, [9]Եբր. դստերք յանձնապաստանք, լուարուք զբանս իմ։ (10) Աւուրս քան զտարի խռովեսջիք. կանայք յանձնապաստանք. քանզի [10]Եբր. տունսուրախութեան քաղաքին ցնծացելոյ։ (14) Զի ապարանք լքեալ են, քաղաքն բազմամարդ թողեալ է, բարձրաւանդակն և դիտանոց լիցին [11]Եբր. մեր [12]Այգեստան՝ արտ պտղաբեր [13]Եբր. խաղաղութիւն, և արդիւնքն արդարութեան հանգիստ և վստահութիւն [14]Եբր. ի բնակութեան խաղաղութեան և ի խորանս վստահութեան, և ի հանգստեան հանդարտութեան. (19) Եւ կարկուտ իջցէ ի վերայ

20 լցեալն ի դաշտի։ Երանի որ սերմանիցեն՝՝
ընդ ամենայն ջրով ուր եզն եւ էշ կոխիցեն։

ԳԼ. ԼԳ

1 [1]Վա՜յ այնոցիկ որ թշուառացուցանենն
զձեզ, բայց զձեզ ոչ ոք կարէ թշուա-
ռացուցանել. եւ որ արհամարհէն՝ ոչ
զձեզ արհամարհէ. զի մատնեսցին ի
պարտութիւն որ զձեզն արհամարհեն.
եւ իբրեւ ցեց ի վերայ ձորձոյ՝ այն-
պէս մատնեսցին ի պարտութիւն։՝՝
2 Տէր, ողորմեաց մեզ՝ զի ի քեզ յուսա-
ցաք. [2]եղեւ զաւակ անհաւատիցն ի
կորուստ, այլ մեր փրկութիւն ի քէն է ի
3 ժամանակի նեղութեան։ Վասն բարբա-
ռոյ ահի քո յիմարեցան ժողովուրդք, եւ
յերկիւղէ՝՝ քումմէ ցրուեցան հեթանոսք։
4 [3]Եւ արդ ժողովեսցի կապուտն ձեր
մեծի եւ փոքու, որպէս ոք զի ժողո-
վեսցէ զմարախ իբրեւ ի գրոյ, այնպէս
5 այսն ատիցեն զձեզ։ Սուրբ է Տէր
Աստուած մեր որ բնակեալն է ի բար-
ձունս. լցաւ Սիոն իրաւամբք եւ արդա-
6 րութեամբ։ Օրինօք մատնեսցին, եւ
գանձուք եկիցի փրկութիւնն մեր. ե-
հաս իմաստութիւն եւ հանճար եւ աս-
տուածպաշտութիւն Տեառն. այս են
գանձք արդարութեան։
7 Ահաւասիկ յահէդ ձերմէ երկիցեն, յո-
րոց երկնչէիքն՝ երկիցեն ի ձէնջ. հրեշ-
տակս արձակեսցեն որ լայցեն զառնա-
պէս՝ եւ խնդրեսցեն խաղաղութիւն.
8 Զի հատան ճանապարհք նոցա. հան-
գարտեաց ահն հեթանոսաց, եւ բարձաւ
ուխտն որ ընդ նոսա, եւ մի՛ եւս հա-
9 մարիցիք զնոսա ի մարդիկ։ Սուգ առ
եւ տկարացաւ՝՝ երկիր. յամօթ եղեւ Լի-
բանան, [4]ի դաշտ մարգագետին համա-
րեցաւ Սարոն. յայտնի եղեւ Գալիլեա՝՝
10 եւ Կարմեղոս։ Արդ յարեայց, ասէ Տէր.
արդ փառաւորեցայց, արդ բարձրացայց.
11 [5]Արդ տեսջիք, արդ յամօթ լիջիք. ըն-
դունայն լիցի զօրութիւն ոգւոց ձերոց,
12 եւ հուր կերիցէ զձեզ։ Եւ եղիցին հե-
թանոսք խարշեալք իբրեւ զփուշ յա-
13 գարակի՝ այրեցեալ եւ ընկեցեալ։՝՝ Լուի-
ցեն հեռաւորք զոր արարի, ծանիցեն
14 մերձաւորք զզօրութիւն իմ։ [6]Մերժե-
ցան ի Սիոնէ՝՝ անօրէնք, զողումն կալ-
ցի զամպարիշտս։ Իսկ արդ ո՞ [7]պատ-
մեսցէ ձեզ եթէ հուր բորբոքեալ կայ,
կամ ո՞ պատմեսցէ ձեզ զտեղւոյն՝՝ յա-
15 ւիտենից։ Որ գնայ արդարութեամբ,
խօսի զուղիղ [8]ճանապարհէ, ատեայ
զանօրէնութիւն եւ զանիրաւութիւն,
թօթափէ զձեռս իւր ի կաշառոց, ծան-
րացուցանէ զականջս առ ի չլսելոյ զդա-
տաստան արեան, խնու զաչս իւր զի
16 մի՛ տեսցէ զանիրաւութիւն։ Նա բնա-
կեսցէ ի բարձր այրի վիմի հաստատնոյ.
հաց տացի նմա՝ եւ ջուր նորա հաւա-
17 տարիմ։ [9]Զթագաւորն փառաց տեսջիք.
եւ աչք ձեր տեսցեն զերկիրն ի հեռուստ,
18 Եւ անձինք ձեր խոկասցեն յերկեւղ
Տեառն։ Ո՞ւր են դպիրքն, ո՞ւր են
խրատտուքն, ո՞ւր է որ ունի զհամար
պահակերայ զմեծի եւ զփոքու՝ ժողո-
19 վրրդեանն, Ընդ որում ոչ ինչ խորհեցաւ.
զի չէր տեղեակ ծանրաձայնին վասն
չլսելոյ. ժողովուրդ յոռացեալ, եւ ոչ

---

անտառին, խոնարհելով խոնարհեսցի բարձրքն.
(20) Երանի ձեզ որ սերմանէք [1]Եբր. Վա՜յ
որ աւերես, եւ դու չես աւերուել. որ
կողոպտես, եւ զքեզ ոչ կողոպտեցին. ի
դադարել քո յաւերելոյ՝ աւերեսցիս, ի վախ-
ճանել քո ի կողոպտելոյ՝ կողոպտեսցեն զքեզ։
[2]Եբր. լեր բազուկ նոցա ընդ առաւօտս. և փրր-
կութիւն մեր՝ ի ժամանակի նեղութեան։(3) Ի
ձայնէ ամբոխի խուսափեցան ժողովուրդք, ի
բարձրանալոյ [3]Եբր. Եւ ժողովեսցի կապուտն
ձեր որպէս ժողովի թրթուր. վազվզեսցեն առ
նա որպէս վազվզեն մորախք։ (5) Բարձրեալ
է Տէր, զի բնակեալ է ի բարձունս. ելից զՍիոն
իրաւամբ եւ արդարութեամբ։ (6) Եւ եղիցի
հաստատութիւն ի ժամանակս քո. զօրութիւն
փրկութեան իմաստութիւն եւ հանճար. եր-
կեւղ Տեառն այն է գանձ նորա։
(7) Ահա հզօրք նոցա գոչեն արտաքոյ. հրեշ-
տակք խաղաղութեան լան դառնապէս։ (8) Ա-
մայացան ճանապարհք նոցա. դադարեաց որ
անցանէն ընդ ուղին. դրժեաց ուխտին, խոտեաց
զքաղաքս. եւ ոչինչ համարեցաւ զմարդ։ (9)
Սուգ առ, նուաղեցաւ
[4]Եբր. զօսացեալ է. եղեւ Սարոն իբրեւ զԱրաբա
(անապատ). եւ թօթափեցան Բասան [5]Եբր.
Յղասջիք խար, ծնջիք խոզան. շունչ ձեր իբրեւ
հուր կերիցէ զձեզ։ (12) Եւ եղիցին ժողովուրդք
յայրեաց բոցոյ, փուշք հատեալք, այրեսցին ի
կրակի։ [6]Եբր. Երկեան ի Սիոն [7]Եբր. բնա-
կեսցէ ի մէնջ ի հուր որ ուտէ. ո՞ բնակեսցէ ի
մէնջ ի հրդեհի [8]Յեբր. պակաս [9]Եբր. Զթա-
գաւորն ի գեղեցկութեան իւրում տեսցեն
աչք քո. տեսցեն զերկիրն ի հեռուստ։ (18)
Սիրտ քո խոկասցի զերկեւղ. ո՞ւր է դպիր, ո՞ւր
է որ կշռէն. ո՞ւր է որ գրէ զաշտարակս։ (19)
Զժողովուրդն բուռն մի՛ տեսցես, ժողովուրդ
խոր շրթամբք ի լսել. խուժադուժ լեզուաւ

20 զոյ լսողին ի միտ առնուլ։ Անաւասիկ
Սիոն քաղաք փրկութեան մերոյ. աչք ձեր
տեսցեն զԵրուսաղէմ քաղաք մեծացեալ,
խորանք որ ոչ շարժեսցին՝՝. եւ մի՛ շար-
ժեսցին ցիցք խորանի նորա յաւիտեանս
ժամանակաց, եւ մի՛ խզեսցին պարան-
21 դակք նորա։ Զի [1]անուն Տեառն մեծ է ի
ձեզ. ձեզ լիցի տեղին յորում գետքն եւ
ջրադարձք լայնք եւ ընդարձակք. ոչ
երթիցես ընդ այն ճանապարհ, եւ մի՛
գնասցեն նաւք քո վարեալք. զի Աստուած
իմ մեծ է, եւ ոչ արասցէ զանց զինեւ։
22 Տէր հայր մեր՝՝, Տէր դատաւոր մեր, Տէր
[2]իշխան մեր, Տէր թագաւոր մեր, [3]Տէր
23 փրկիչ մեր՝ եւ՝՝ նա փրկեսցէ զմեզ։ [4]Խզե-
ցան պարանք քո՝ զի ոչ հանդարտեցին,
նոյնպէս եւ կայմն խոնարհեցաւ՝ եւ ոչ
պարզեսցէ զառագաստն, եւ ոչ արձա-
կեսցէ զնշանն մինչեւ մատնեսցի ի կո-
24 րուստ։ Այսուհետեւ բազում կաղք ա-
ւար առնուցուն, եւ մի՛ ասասցեն թէ
վաստակեցաք. ժողովուրդն որ բնակ-
եալ իցէ ի նոսա, զի թողան մեղք նոցա։՝՝

## ԳԼ. ԼԴ

1 Մատերուք, հեթանոսք, եւ լուարուք.
ունկն դիք, [5]իշխանք. լուիցէ երկիր եւ
[6]որ ի նմա՝՝, տիեզերք եւ ժողովուրդք
2 ի նմա։ Զի սրտմտութիւն Տեառն ի վե-
րայ ամենայն ազգաց, եւ բարկութիւն
ի վերայ ամենայն [7]թուոց նոցա. սա-
տակել զնոսա եւ մատնել զնոսա ի սպա-
3 նումն։ Եւ վիրաւորք նոցա զխտապատ
անկցին, եւ ելցէ [8]հոտ նոցա, եւ թաց-
4 ցին՝՝ լերինք յարենէ նոցա։ Եւ հալես-
ցին ամենայն զօրութիւնք երկնից, եւ
գալարեսցին երկինք իբրեւ զմագաղաթ,
եւ ամենայն աստեղք թօթափեսցին իբ-
րեւ զտերեւ յորթոյ եւ որպէս անկանի
5 տերեւ ի թզենւոյ։ Զի արբեցաւ սուր
իմ յերկինս. արդ ի վերայ Եդովմայեց-
ւոյն իջցէ, եւ ի վերայ կորստական
6 ժողովրդեանն դատաստանօք։ Սուր
Տեառն լցաւ արեամբ, [9]ուռուցաւ ճար-
պով գառանց եւ ճարպով ցլուց եւ՝՝
խոյոց. զի զոհ Տեառն է ի Բոսոր, եւ
սպանդ մեծ յերկրին Եդովմայեցւոց։
7 Եւ ընկճեսցին [10]մեծամեծք ընդ նոսա՝
եւ խոյք եւ ցուլք՝՝. եւ արբեսցի եր-
կիրն յարենէ նոցա, եւ հող նոցա ի
8 ճարպոյ նոցա [11]լցցի։ Զի օր դատաս-
տանի՝՝ Տեառն է, եւ տարեկան հատուց-
9 ման [12]դատաստանի Սիոնի։ Եւ դարձ-
ցին ձորք նորա ի ձիւթ, եւ երկիր նո-
րա ի ծծումբ. եւ եղիցի երկիր նորա
10 իբրեւ զձիւթ վառեալ՝ ի տուէ եւ [13]ի
գիշերի, եւ մի՛ շիջցի յաւիտեանս ժա-
մանակաց. եւ՝՝ բարձրասցի ծուխ նորա
ի վեր, [14]եւ աւերեսցի յազգս ազգաց.
եւ ի բազում ժամանակս աւերեսցի,
եւ՝՝ ոչ ոք իցէ որ անցանիցէ ընդ նա։
11 [15]Եւ բնակեսցեն ի նմա թռչունք եւ ոզ-
նիք եւ ցինք եւ ագռաւք. եւ անկցին
ի նմա լարաբամինք աւերակի, եւ յուշ-
12 կապարիկք բնակեսցեն ի նմա։ Եւ եղի-
ցին իշխանք նորա իբրեւ չեղեալք, եւ
թագաւորք նորա եւ մեծամեծք եղիցին
13 ի կորուստ։ Եւ բուսցի ի քաղաքս նորա
եւ յամուրս փայտ փշաբեր. եւ եղիցի
բնակութիւն համբարեաց եւ հանդիստ
14 ջայլամանց։ Եւ պատահեսցեն դեւք
յուշկապարկաց, եւ տայցեն ձայն մի-
միանց. անդ հանգիցեն յուշկապարիկք,

առանց իմանալոյ։ (20) Հայեաջիր ի Սիոն, քաղաք տօնից տարեկանաց մերոց. աչք քո տեսցեն զԵրուսաղէմ, զբնակութիւն հանգստեան. խորան որ ոչ շարժի [1]Եբր. անդ փառաւորեալն Տէր եղիցի մեզ տեղի գետոց, վտակաց տարածելոց երկուստեք. մի՛ գնասցէ ընդ նա նաւակ թիակաց, եւ նաւ մեծ մի՛ անցցէ ընդ նա։ (22) Զի [2]Եբր. օրէնսդիր [3]Եբր. դոլոոե [4]Եբր. Կարկեցան պարանք քո, ոչ կարացին ունել ուղիղ զկայմ իւրեանց, ոչ կարացին պարզել զառագաստն, յայնժամ բաժանեցաւ աւար բազում. կաղք առին կողոպուտ։ (24)Եւ մի՛ ասիցէ բնակիչն, Հիւանդացայ. ժողովուրդն որ բնակէ անդ՝ արձակեսցի յանօրէնութենէ։ [5]Եբր. ազինք [6]Եբր. լրութիւն նորա [7]Եբր. զօրաց [8]Եբր. ի դիականց նոցա հոտ նոցա, եւ հալեսցին

[9]Եբր. պարարտացան ի ճարպոյ, յարենէ գառանց եւ նոխազաց, ի ճարպոյ երիկամանց [10]Եբր. միեղջերուք ընդ նոսա, և զուարակք ընդ ցլուց [11]Եբր. պարարտասցի։(8)Զի օր վրէժխնդրութեան [12]Եբր. կռուոյ [13]Եբր. ի գիշերի մի՛ շիջցի. յաւիտեանս ժամանակաց [14]Եբր. աւերեսցի ազգաց յազգս. յաւիտեանս յաւիտենից [15]Եբր. Եւ ժառանգեսցեն զնա հաւալուսն և ոզնիք, և քաջահու եւ ագռաւ բնակեսցեն ի նմա. եւ տարածեսցէ ի վերայ նորա լար ամայութեան եւ կշիռս դատարկութեան։ (12)Պատուականք նորա չիցեն անդ որ ի թագաւորութիւն կոչեսցեն. եւ ամենայն իշխանք նորա եղիցին յոչինչ։ (13) Եւ բուսցին յապարանս նորա փուշք, եղինճ եւ եկքան յամուրս նորա. և եղիցի բնակութիւն վիշապաց, գաւիթ դստերաց ջայլամանց։ (14) Եւ պատահեսցեն բորենիք կլոց. և քաջ առ ընկեր իւր գոչեսցէ. եւ անդ յուշկա-

15 զի գտին իւրեանց հանգիստ. Անդ եհան
ձագս ոզնի, եւ անոյց երկիր զձագս
նորա զգուշութեամբ. անդ պատահեցին
մինեանց եղջերուք, եւ տեսին զերեսս
16 իւրեանց. Թուով անցին, եւ մի ի նո-
ցանէ ոչ վրիպեաց. ընկեր զընկեր ոչ
խնդրեցին. զի Տէր հրամայեաց նոցա,
17 եւ ոգի նորա ժողովեաց զնոսա։" Եւ
նոյն վիճակեցոյց զնոսա. եւ ձեռն նորա
բաժանեաց նոցա [1]ճարակս՝ յաւիտեանս
ժամանակաց. ժառանգեսցեն ազգաց
յազգս, եւ [2]հանգիցեն ի նմա։

## ԳԼ. ԼԵ

1 [3]Ուրախ լեր, անապատ ծարաւի՛. ցնծասցէ
անապատն եւ ծաղկեսցէ իբրեւ զշու-
2 շան։ Եւ [4]ծաղկեսցէ եւ ցնծասցէ անա-
պատն Յորդանանու, եւ" փառքն Լի-
բանանու տացի նմա եւ պատիւն Կար-
մեղայ, [5]եւ ժողովուրդ իմ տեսցէ" զփառս
Տեառն եւ զբարձրութիւն Աստուծոյ
մերոյ։
3 [6]Զօրացարուք, ձեռք լքեալք եւ ծունկք
4 կթուցեալք. Մխիթարեցարուք, կարճա-
միտք սրտիւք". զօրացարուք եւ մի՛
երկնչիք. ահաւասիկ Աստուած [7]մեր
հատուցանէ դատաստան եւ հատուցէ",
5 ինքնին եկեսցէ եւ փրկեսցէ զմեզ։ Յայն-
ժամ աչք կուրաց բացցին եւ ականջք
6 խլից լուիցեն։ Յայնժամ վազեսցէ կաղն
իբրեւ զեղջերու, եւ [8]պարզ լիցի լե-
զու ծանրախօսաց". զի ջուր բղխեաց
յանապատի, եւ գետ ի ծարաւուտ
7 երկրի։ Եւ եղիցի անջուրն յագարակս,
եւ [9]աղբեւր ջրոց ի ծարաւուտ երկրի.
անդ եղիցի ուրախութիւն հաւուց եւ
մակաղատեղք խաշանց. անդ մարգա-
8 գետինք եւ խաղք. Անդ եղիցի ճանա-
պարհ մաքրեալ, եւ ճանապարհ սուրբ
կոչեսցի, եւ մի՛ անցցէ ընդ նա պիղծ,
եւ մի՛ եղիցի անդ ճանապարհ պղծոց.
այլ ցրուեալքն գնասցեն ընդ նա եւ մի՛
9 մոլորեսցին։" Մի՛ եղիցի անդ առեւծ,
եւ մի ի գազանաց չարաց ընդ այն մի՛
անցանիցէ, եւ մի՛ ամենեւին գացի ի
նմա. այլ ընդ նա գնասցեն [10]փրկեալքն
10 եւ ժողովեալքն վասն Տեառն։ Դարձ-
ցին" եւ եկեսցեն ի Սիոն ցնծութեամբ,
եւ ուրախութիւն յաւիտենից ի վերայ
գլխոյ նոցա. [11]զի ի վերայ գլխոց նոցա
օրհնութիւն եւ" ցնծութիւն, եւ ուրա-
խութիւն հասցէ նոցա. [12]մերժեցան
ցաւք եւ տրտմութիւնք" եւ հեծու-
թիւնք։

## ԳԼ. ԼԶ

1 Եւ եղեւ ի չորեքտասաներորդի ամի
թագաւորութեանն Եզեկիայ, ել Սենե-
քերիմ արքայ Ասորեստանեայց ի վերայ
ամուր քաղաքացն Հրէաստանի, եւ առ
2 զնոսա։ Եւ առաքեաց արքայն Ասորես-
տանեայց զՌափսակ ի Լաքիսայ յԵրու-
սաղէմ առ արքայն Եզեկիա զօրօք բազ-
մօք. եւ եկն եկաց ի վերայ ջրմղի վեր-
նոյ աւազանին ի ճանապարհի ագարա-
3 կին թափչաց։ Եւ ելին առ նա Եղիա-
կիմ Քեղկեայ որ հազարապետն էր, եւ
Սովմնաս՝ հրովարտակաց դպիր, եւ Յո-
վաք Ասափայ՝ յիշատակաց դպիր։
4 Եւ ասէ ցնոսա Ռափսակ. [11]Երթայք
ասացէք ցԵզեկիա, Այսպէս ասէ [13]մեծ,
արքայն Ասորեստանեայց. [14]Յո՞ յուսաց-
5 եալ իցես. Միթէ խորհրդով կամ բա-
նիւք շրթանց պատերազմ վճարիցի՞։"
իսկ արդ յո՞ յուսացեալ իցես զի ոչ
6 հնազանդիս ինձ։ Ահաւասիկ յուսացեալ
ես ի ցուպն եղեգնեայ ի ջախջախ՝ յԵ-
գիպտացին, յոր թէ յենուցու ոք՝ խոր-
տակի եւ ընդ ձեռս նկանէ. այնպէս է

---

պարիկ հանգիցէ եւ գտցէ իւր դադար։ (15) Անդր բոյնը դիցէ քարբ, եւ ածցէ ձուս. եւ թխսեսցէ եւ ստուեսցէ ընդ հովանեաւ իւրով, եւ ժողովեսցին ուրուրք, իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում։ (16) Խնդրեցէք ի գիրս Տեառն, և ընթերցարուք. մին ի նոցանէ ոչ պակասեսցէ, եւ ոչ մին ցանկասցի ընկերին. զի բերան նորա հրամայեաց, եւ Ոգի նորա ժողովեսցէ զնոսա։
[1]Եբր. լարիւք [2]Եբր. բնակեսցեն [3]Եբր. Ուրախ եղիցի անապատն եւ անջրդին [4]Եբր. ծաղկելով ծաղկեսցէ, եւ ցնծասցէ ուրախութեամբ եւ երգովք. [5]Եբր. եւ Սարոնի. նոքա տեսցեն [6]Եբր. Զօրացուցէք զձեռս լքեալս, եւ զծունկս կթուցեալս հաստատեցէք. (4) Ասացէք կարճամտաց սրտիւք [7]Եբր. ձեր եկեսցէ վրէժս, հատուցմամբ Աստուծոյ. [8]Եբր. աստասցէ գովութիւնս լեզու համրի [9]Եբր. անջրդին՝ յաղբերս ջրոց. ի բնակութեան վիշապաց որ է դադար նորա՝ գաւիթ եղեգան և պրտուոյ։ (8) Եւ եղիցի անդ պողոտայ եւ ճանապարհ, և ճանապարհ սրբութեան կոչեսցի. մի՛ անցցէ ընդ նա պիղծ, և այն եղիցի վասն նոցա, որ գնայցեն ընդ նա, յիմարք իսկ մի մոլորեսցին։ [10]Եբր. փրկեալք. (10) Եւ ազատեալքն Տեառն դարձցին [11]Յ Եբր. գ[illegible] [12]Եբր. մերժեսցին ցաւք [13]Եբր. արքայն մեծ, [14]Եբր. Զի՞նչ իցէ յոյսն յոր յուսացեալ իցես։ (5) Ասացեր, խորհուրդ և զօրութիւն է ինձ ի պատերազմ. բանք շրթանց եւեթ են

Փարաւոն արքայն Եգիպտացւոց, [1]եւ ամենեքեան՝՝ որ յուսացեալ են ի նա։
7 Իսկ եթէ ասիցէք, եթէ ի Տէր Աստուած մեր յուսացեալ եմք, ո՞չ ապաքէն նա է՝ [2]վասն որոյ՝՝ քակեաց Եզեկիա զբարձունս եւ զսեղանս [3]նորա, եւ պատուէր ետ Հրէաստանի եւ Երուսաղեմի, առաջի [4]նորա սեղանոյն՝՝ միայն
8 երկիր պագանել։ Այլ արդ [5]եկայք խառնեցարուք՝՝ ընդ տեառն իմում արքային Ասորեստանեայց, եւ տաց [6]ձեզ երկուս հազարս երիվարաց, եթէ [7]կարիցէք տալ
9 հեծեալս ի վերայ նոցա։ Եւ զիա՞րդ [7]կարիցէք ի դիմի հարկանել միում ումեք [8]յաշխարհակալաց ծառայից տեառն [9]իմոյ, որք յուսացեալ էք յԵգիպտոս
10 ի հեծեալս եւ յերիվարս նոցա՝՝։ Իսկ արդ [10]մեք առանց Տեառն եկեալ [11]իցեմք յերկիրս յայս տալ ընդ սմա պատերազմ. Տէր ասաց ցիս, Ել յերկիրն յայն, եւ ապականեա զնա։
11 Եւ ասեն ցնա Եղիակիմ եւ Սոմնաս եւ Յովաք, Խօսեաց ընդ ծառայս քո Ասորերէն, զի լսեմք. եւ մի՛ խօսիր ընդ մեզ Հրեարէն [10]եւ ընդէ՞ր խօսիցիս՝՝ յականջս մարդկանս որ [10]անկեալ կան
12 ղպարսպաւ։ Ասէ ցնոսա Ռափսակ, Միթէ առ տէ՞րն ձեր կամ առ ձե՞զ առաքեաց զիս տէր իմ խօսել զբանս զայսոսիկ. ո՞չ ապաքէն առ մարդիկ որ նստին ի վերայ պարսպին, [12]զի մի՛ ուտիցեն զաղբ եւ ըմպիցեն՝՝ զմէզս իւրեանց ձեւք հանդերձ։
13 Յոտն եկաց Ռափսակ եւ աղաղակեաց ի ձայն մեծ Հրեարէն՝ եւ ասէ. Լուարուք զպատգամս թագաւորին մեծի արքային
14 Ասորեստանեայց. Այսպէս ասէ արքայ. Մի՛ պատրեսցէ զձեզ Եզեկիա [13]բանիւք՝
15 որովք՝՝ ոչ կարէ փրկել զձեզ։ Եւ մի՛ [14]խաբեսցէ զձեզ Եզեկիա՝ թէ Աստուած փրկեսցէ զձեզ՝՝, եւ ոչ մատնեսցի քաղաքս
16 ի ձեռս թագաւորին Ասորեստանեայց։ Մի՛ անսայք Եզեկեայ. [15]այսպէս ասէ արքայն Ասորեստանեայց. [16]Եթէ կամիցիք զխրախ առնձանել, եկայք՝՝ ելէք առ իս. եւ կերիջիք իւրաքանչիւր զայգի իւր եւ զթզենի, եւ արբջիք ջուր ի ջրհորոց
17 ձերոց, Մինչեւ եկից եւ տարայց զձեզ յերկիրն որ իբրեւ զերկիրս ձեր է, երկիր ցորենոյ եւ գինւոյ, հացաւէտ եւ
18 այգաւէտ։ Մի՛ խաբեսցէ զձեզ Եզեկիա՝ եւ ասասցէ թէ [17]Աստուած փրկէ զձեզ՝՝. միթէ փրկեցի՞ն աստուածք ազգացն զիւրաքանչիւր երկիր ի ձեռաց արքա-
19 յին Ասորեստանեայց։ Ո՞ւր է աստուած Եմաթայն եւ Արփաթայ, եւ ո՞ւր է աստուած [18]քաղաքին Սեփարուիմ՝՝. միթէ կարացի՞ն փրկել զՍամարիա ի ձեռաց
20 իմոց։ Ո՞ ոք յաստուածոց ամենայն ազգացն այնոցիկ կարաց փրկել զերկիր իւր ի ձեռաց իմոց, զի [19]եւ ձեր Աստուածդ՝՝ փրկեսցէ զԵրուսաղէմ ի ձեռաց իմոց։
21 Լուռ եղեն եւ ոչինչ ետուն պատասխանի, վասն հրամանի թագաւո-
22 րին չտալ պատասխանի։ Եւ եմուտ Եղիակիմ Քեղկեայ որ հազարապետն էր, եւ Սոմնաս հրովարտակաց դպիր, եւ Յովաք Ասափայ յիշատակաց դպիր առ Եզեկիա՝ զոձիս պատառեալ, եւ պատմեցին նմա զբանս Ռափսակայ։

ԳԼ. ԼԷ

1 Եւ եղեւ իբրեւ լուաւ Եզեկիա արքայ, պատառեաց զպատմուճան իւր եւ քուրձ
2 զգեցաւ, եւ ել ի տուն Տեառն։ Եւ առաքեաց զԵղիակիմ զհազարապետն եւ զՍոմնաս հրովարտակաց դպիր եւ զծերս ի քահանայից անտի քրձազգածս առ
3 Եսայի մարգարէ որդի Ամովսայ։ Եւ ասեն ցնա, Այսպէս ասէ Եզեկիա. Այսօր է օր նեղութեան եւ նախատանաց եւ կշտամբութեան [10]եւ բարկութեան՝՝, յորում ասեր հասեալ են երկունք ծննդա-
4 կանի՝ եւ ոչ կարէ ծնանել։ [20]Լուիցէ Տէր Աստուած քո զբանս Ռափսակայ, զոր առաքեաց արքայն Ասորեստանեայց տէրն նորա՝ նախատել զԱստուած կենդանի, եւ [21]նախատել բանիւք զորս լուաւ Տէր Աստուած քո. եւ արդ [22]խնդրեսցես ի Տեառնէ Աստուծոյ քումմէ՝՝
5 վասն մնացելոցս այսոցիկ։ Եւ եկին

[1] Օրին. ամենեքեան [2] Օրին. զորոյ [3] Օրին. նորա
[4] Օրին. սեղանոյս այսորիկ [5] Օրին. խառնեցայք, կամ, հաշտեաց [6] Օրին. քեզ [7] Օրին. կարիցես
[8] Օրին. ի կուսակալաց [9] Օրին. իմոց փոքունց, որ յուսացեալ ես յԵգիպտոս վասն կառաց եւ հեծելոց նորա։ [10] Օրին. պարսպաւ [11] Օրին. իցեմ
[12] Օրին. ուտել զաղբ եւ ըմպել [13] Օրին. զի
[14] Օրին. յուսացուսցէ զձեզ Եզեկիա ի Տէր եւ ասիցէ. Փրկելով փրկեսցէ զմեզ Տէր. [15] Օրին. զի այսպէս

[16] Օրին. Արարէք ընդ իս օրհնութիւն, կամ, խաղաղութիւն և [17] Օրին. Եհովայ փրկեսցէ զմեզ [18] Օրին. Սեփարուիմայ [19] Օրին. Եհովայ [20] Օրին. Թերեւս լուիցէ
[21] Օրին. յանդիմանեսցէ [22] Օրին. կացցես յաղօթս

ծառայքն Եզեկիայ արքայի առ Եսայի։
6 Եւ ասէ ցնոսա Եսայի, Զայս ասասջիք
ցտէրն ձեր. Այսպէս ասէ Տէր. Ոչ եր-
կիցես ի բանիցն զոր լուար, որովք նա-
խատեցին զիս հրեշտակք արքային Ա-
7 սորեստանեայց։ Ահաւասիկ արկանեմ
ես ի նա ոգի [1]խռովութեան, եւ լու-
եալ համբաւ՝ դարձցի յաշխարհ իւր, եւ
*անկցի ի սուր յերկրի իւրում։
8 Եւ դարձեալ անդրէն Ռափսակայ ե-
հաս առ արքայն Ասորեստանեայց, զի
պաշարեալ էր զՂոբնան, [2]եւ լուաւ թէ
արքայն Ասորեստանեայց չուեաց ի Լա-
9 քիսայ։ Եւ [3]ել Թարակ արքայ Եթով-
պացւոց պաշարել զնա. եւ դարձաւ
անդրէն։ Եւ՟ առաքեաց հրեշտակս առ
10 Եզեկիա եւ ասէ, Այսպէս ասասջիք ցԵ-
զեկիա արքայ Հրէաստանի. Մի՛ խա-
բեսցէ զքեզ Աստուած յոր դու յուսաց-
եալ ես, եւ ասիցէ՝ թէ Ոչ մատնեսցի
Երուսաղէմ ի ձեռս արքային Ասորես-
11 տանեայց։ Արդ ահա չիցէ՞ լուեալ քո
զոր ինչ արարին թագաւորք Ասորես-
տանեայց ընդ ամենայն երկիր, ո՛րպէս
սատակեցին զնոսա. եւ արդ դու ապ-
12 րեցո՞ց իցես։ Մի թէ ապրեցուցի՞ն աս-
տուածք ազգացն զայնոսիկ զորս կո-
րուսին հարքն իմ, զԳոզան եւ զԽա-
ռան եւ [4]զՀասփեթ, որ են յերկրին
13 Եմաթայ՟։ Ո՞ւր են թագաւորք Եմա-
թայն եւ Արփաթայ, եւ ո՞ւր են թա-
գաւորք քաղաքին Սեփարուիմ, Անայն
14 եւ Աւայ։ Եւ ա՛ռ Եզեկիա զհրովար-
տակն ի ձեռաց հրեշտակացն, ընթեր-
ցաւ եւ եմուտ ի տունն Տեառն, եւ տա-
15 րածեաց առաջի Տեառն։ Եւ եկաց յա-
16 ղօթս Եզեկիա առ Տէր եւ ասէ. Տէր
Սաբաւովթ, Աստուած Իսրայէլի, որ
նստիս ի քերովբէս, դու ես Աստուած
միայն ամենայն թագաւորութեանց տիե-
զերաց, դու արարեր զերկինս եւ՝ զեր-
17 կիր։ Խոնարհեցո, Տէր, զունկն քո եւ
լուր. բաց, Տէր, զաչս քո. նայեաց.
[5]Տէր, լուր, Տէր, եւ տես՟ զպատգամս
զոր առաքեաց Սենեքերիմ արքայ Ասո
րեստանեայց նախատել զԱստուած կեն-
18 դանի։ Եւ արդարեւ աւերեցին թագա-
ւորքն Ասորեստանի զաշխարհս ամենայն
19 եւ զերկիր նոցա, Եւ հրձիգ արարին
զկուռս նոցա. քանզի չէին աստուածք,
այլ ձեռագործք մարդկան, փայտեղէնք
եւ քարեղէնք, եւ կորուսին զնոսա։
20 Բայց արդ, Տէր Աստուած մեր, ապրեցո
զմեզ ի ձեռաց նորա. զի ծանիցեն ա-
մենայն թագաւորութիւնք երկրի՝ թէ
դու միայն ես [6]Աստուած։
21 Եւ [7]առաքեցաւ Եսայի որդի Ամով-
սայ առ Եզեկիա՝ եւ ասէ ցնա, Այսպէս
ասէ Տէր Աստուած Իսրայէլի. Լուայ
աղօթիցն զոր աղաչեցեր առ իս՝ վասն
Սենեքերիմայ արքային Ասորեստան-
22 եայց. Արդ այս բան է զոր խօսեցաւ
վասն նորա [6]Աստուած. Անգոսնեաց ար-
համարհեաց զքեզ՝ կոյս դուստր Սիոնի.
զլուխ շարժեաց ի վերայ քո՝ դուստր
23 Երուսաղեմի։ Զո՞ նախատեցեր եւ
[8]զրգռեցեր, եւ առ ո՞ բարձրացուցեր
զբարբառ քո, եւ [1]ոչ ամբարձեր զաչս
24 քո ի բարձունս ի Սուրբն Իսրայէլի։ [1]Զի՞
ի ձեռն հրեշտակաց նախատեցեր զՏէր.
դու ասէիր թէ Բազմութեամբ կառաց
իմոց ելի ի բարձրութիւն լերանց, եւ
ի ծագս Լիբանանու. եւ կոտորեցի
զբարձրութիւն մայրից նորա, եւ զգե-
ղեցկութիւն նոճից նորա, եւ մտի ի
25 բարձրութիւն [9]կողմանց անտառին. Եւ
արկի կամուրջ, եւ աւերեցի զջուրսն
26 եւ զամենայն ժողովս ջուրցն՟ Զիցէ՞
լուեալ քո զոր յառաջագոյն արարի ես
յաւուրցն առաջնոց զոր կարգեցի, եւ
այժմ յայտնեցի [10]աւերել զհեթանոսս յա-
27 մուրս իւրեանց, Եւ զբնակիչս քաղա-
քաց յիւրաքանչիւր ամրոցաց. թողի ի
ձեռաց եւ ցամաքեցան, եւ եղեն իբ-
րեւ զխոտ ցամաքեալ ի վերայ տան-
28 եաց եւ իբրեւ զսէզ չորացեալ՟ Արդ
զկայս հանգստեան քո, եւ զել եւ զմուտ
29 ճանապարհաց քոց ես ինձէն գիտեմ. Եւ

[1]Եբր. [illegible] *Եբր. կործանեցից զնա [2]Եբր. զի [3]Եբր. լուաւ զԹարակայ արքայէ Եթովպացւոց զի ասէին թէ Ել տալ պատերազմ ընդ քեզ։ Իբրեւ լուաւ [4]Եբր. զՀռենեփ եւ զորդիսն Եդեմայ որ ի Թելասար [5]Եբր. եւ լուր զամենայն

[6]Եբր. Տէր [7]Եբր. առաքեաց [8]Եբր. հայհոյեցեր [9]Եբր. ծագաց նորա, յանտառ Կարմեղոսի նորա։ (25) Ես փորեցի եւ արբի ջուրս. և ցամաքեցուցի թաթիւք ոտից իմոց զամենայն գետս ամրոցեալս, կամ, Եգիպտոսի [10]Եբր. զի դարձուցես յամայութիւն ի կոյտս աւերակաց զքաղաքս ամրացեալս. (27) Եւ բնակիչք նոցա կարճեցեալք ձեռօք, զարհուրեցան եւ յամօթ եղեն, և եղեն իբրեւ զխոտ վայրի, եւ իբրեւ զդեղ դալար, իբրեւ զխոտ տանեաց, հարեալ ի խորշակէ մինչչեւ հասեալ։

սրտմտութիւն քո զոր սրտմտեցեր, եւ
[1]դառնութիւն քո ել առաջի իմ. եւ
արկից վարապան ի ցռուկ քո, եւ դան-
դանաւանդ ի կզակս քո. եւ դարձուցից
զքեզ ընդ նոյն ճանապարհ ընդ որ ե-
30 կիր: Այլ քեզ այս եղիցի նշան. կերի-
ցես այս ամ [2]զսերմանեալս, եւ յամէ
եւս կերիցես [3]զինքնաբոյսն, եւ յամին
երրորդում սերմանեսջիք եւ հնձեսջիք,
տնկեսջիք այգիս եւ կերիջիք զպտուղ
31 նորա: Եւ եղիցին մնացորդքն Հրէաս-
տանի արձակել արմատս ի խոնարհ, եւ
32 տալ պտուղ ի վեր: Զի յԵրուսաղէմ ե-
ղիցին մնացեալք, եւ ի լերին Սիոնի
ապրեալք. զի նախանձ Տեառն զօրու-
33 թեանց արար զայս: Վասն այսորիկ
այսպէս ասէ Տէր ի վերայ թագաւորին
Ասորեստանեայց. Մի՛ մտցէ նա ի քա-
ղաքս յայս, եւ մի՛ նետս արկցէ ի վե-
րայ դորա, եւ մի՛ փակեսցէ զդա վա-
հանօք, եւ մի՛ պաշարեսցէ զդա պատնի-
34 շօք. Այլ ճանապարհ ընդ որ եկն՝ ընդ
նոյն դարձցի, եւ ի քաղաքդ յայդ մի՛
35 [4]մտցէ: Այսպէս ասէ Տէր. Վերակացու
եղէց քաղաքիդ այդմիկ ապրեցուցանել
զդա, վասն իմ եւ վասն Դաւթի ծա-
ռայի իմոյ:
36 Եւ ել հրեշտակ Տեառն, եւ սատա-
կեաց ի բանակէ անտի Ասորեստանեայցն
հարիւր ութսուն եւ հինգ հազար. եւ
յարեան ընդ առաւօտն՝ գտին զայն ամե-
37 նայն մարմինս մեռեալ: Եւ դարձեալ
անդրէն՝ գնաց Սենեքերիմ արքայն Ա-
սորեստանեայց, եւ բնակեաց ի Նինուէ:
38 Եւ մինչդեռ երկիր պագանէր ի տան
իւրում Նասրաքայ կռոց իւրոյ, Ադրամե-
լէք եւ Սարասար որդիք նորա սպանին
զնա սրով, եւ ինքեանք գնացին փախս-
տական [5]ի Հայս. եւ թագաւորեաց Ա-
սորդան որդի նորա ընդ նորա:

## ԳԼ. ԼԸ

1 Եւ եղեւ ի ժամանակին յայնմիկ հի-
ւանդանալ Եզեկիայ մինչեւ ի մահ. եւ
եկն առ նա Եսայի որդի Ամովսայ[6] եւ
ասէ ցնա, Այսպէս ասէ Տէր. Հրաման
տուր վասն տան քո, զի մեռանիս եւ
2 ոչ կեաս: Եւ դարձոյց Եզեկիա զերեսս
3 իւր յորմ անդր, յաղօթս [7]եկաց. Եւ ասէ,
Ո՛ Տէր, յիշեա զիս, Տէր. զի գնացի
առաջի քո արդարութեամբ եւ ճշմա-
րիտ սրտիւ, եւ զհաճոյս առաջի քո ա-
րարի: Եւ ելաց Եզեկիա լալիւն մեծ:
4 Եւ եղեւ բան Տեառն առ Եսայի եւ
5 ասէ. Երթ եւ ասա ցԵզեկիա, Այսպէս
ասէ Տէր Աստուած Դաւթի հօր քո.
Լուայ բարբառոյ աղօթից քոց, եւ տե-
սի զարտասուս քո. ահաւադիկ յաւե-
լում ի ժամանակս քո ամս հնգետասա-
6 նս. Եւ ի ձեռաց արքային Ասորես-
տանեայց ապրեցուցից զքեզ եւ զքա-
ղաքդ զայդ, եւ վերակացու եղէց քա-
7 ղաքիդ այդմիկ: Եւ այս քեզ նշան ի
Տեառնէ, թէ առնիցէ [8]Աստուած զբանդ
8 զայդ զոր խօսեցաւ. Ահա ադիկ ես դար-
ձուցանեմ զստուեր աստիճանացդ, [9]ընդ
որ իջեալ է չորք, զտասն աստիճանա-
տան քո. եւ դարձուցից զչորս զտաս-
նեքումբք աստիճանօքդ: Եւ ել չոյն
զտասնեքումբք աստիճանօք՝ ընդ որ ի-
ջեալ էր ստուերն:
9 [10]Աղօթք Եզեկիայ արքային Հրէաստա-
նի ի ժամանակի յորում հիւանդա-
ցաւ, եւ յարեաւ ի հիւանդութենէ իւրմէ:
10 Ես ասացի, [11]ի վերանալ աւուրց ի-
մոց գնացից ի դրունս դժոխոց, թողից
11 զմնացորդս ամաց իմոց: Ասացի թէ Ոչ
եւս տեսից [12]զփրկութիւն Աստուծոյ ի
վերայ երկրի, եւ ոչ եւս տեսից զմարդն
12 բնակչօք իւրովք: Պակասեցայ ես յազ-
գատոհմէ իմմէ. թողի զմնացորդս կե-
նաց իմոց. ելին եւ գնացին յինէն՝ որ-
պէս որ քակէ զտաղաւար կանգնեալ.
եղեւ ոգի իմ առ յինէն իբրեւ ոստայն
13 ոստայնայ մերձ ի հատանել: Յաւուր
յայնմիկ մատնեցայ մինչեւ յառաւօտ.
իբրեւ զառեւծ այնպէս խորտակեաց զա-
մենայն ոսկերս իմ, զի ի տուընջենէ մին-

[1]Եբր. անգոսնելդ քո ել յականջս [2]Եբր. զինքնեակս [3]Եբր. զինքնեկաց ինքնեակս [4]Եբր. մտցէ, ասէ Տէր: (35) Եւ [5]Եբր. յերկիրն Արարատայ [6]Եբր. յէշէյն յաւէլու, մարգարէ

[7]Եբր. եկաց առ Տէր, (3) Եւ ասէ, Աղաչեմ, Տէր, յիշեա [8]Եբր. Տէր [9]Եբր. որ իջեալ է ընդ աստիճանն Աքազու՝ ի շողն տասն աստիճանօք յետս. և դարձաւ շողն տասն աստիճանօք յետս ընդ աստիճանն ընդ որս իջեալ էր: [10]Եբր. Գիր [11]Եբր. ի հանդարտութեան [12]Եբր. զՏէր, զՏէր յերկրին կենդանեաց և ոչ ևս հայեցայց ի մարդն ընդ բնակիչս աշխարհի (կամ, հանգստեան): (12) Բնակութիւն իմ բարձցաւ, և տարաւ յինէն իբրև զտաղաւար հովուաց. անկանէի իբրև ոստայն զկեանս իմ. յաւեջէ անտի հատանէ զիս. ի տուէ մինչև ի գիշեր սպառեսցես զիս: (13) Ակն կալայ մինչև ցառաւօտ, իբրև զառեւծ այնպէս խորտակէր զամենայն ոսկերս իմ. ի տուընջենէ մինչև ի

14 չեւ ի գիշեր մատնեցայ։ Իբրեւ ծծի-
ծառն՝ այնպէս ճչեցի, եւ իբրեւ աղա-
ւնի՝ այնպէս մնչեցի. զի նուաղե-
ցին աչք իմ ի հայելոյ ի բարձունս երկ-
նից առ Տէր որ փրկեացն զիս, եւ փա-
15 րատեցոյց զցաւս անձին իմոյ. Եւ ինքն
կարգեաց զամենայն ամս իմ ի դառնու-
16 թիւն անձին իմոյ։ Տէր, վասն այսո-
րիկ պատմեցաւ քեզ, եւ զարթուցեր
17 զհոգի իմ, մխիթարեցայ՝ եւ կեցի։ Ա-
հաւասիկ ի խաղաղութիւն դարձաւ դառ-
նութիւն իմ. փրկեցեր զանձն իմ զի մի՛
կորեայց, եւ ընկեցեր յետոյ իմ զամե-
18 նայն զմեղս իմ։ Զի ոչ թէ որ ի դժոխս
են՝ խոստովան առնիցին առ քեզ, եւ
ոչ մեռեալք օրհնեսցեն զքեզ, եւ ոչ
յուսասցին յողորմութիւնս քո՝ որք ի-
19 ջանեն ի գուբ։ Այլ կենդանիք օրհնես-
ցեն զքեզ՝ որպէս եւ ես. այսուհետեւ
մանկունս ծնայց՝ որ պատմեսցեն զար-
դարութիւն քո, Տէր փրկութեան իմոյ։
20 Եւ ոչ դադարեցից օրհնել զքեզ սաղ-
մոսարանաւ զամենայն աւուրս կենաց ի-
մոց յանդիման տաճարին Աստուծոյ։
21 Եւ ասէ Եսայի ցԵզեկիա, Առ դու պա-
ղատիտ թզոյ, մանրեա եւ դիր ի վե-
22 րայ վիրիդ՝ եւ ողջասցիս։ Եւ ասէ, Այդ
եղիցի նշան եթէ ելանիցեմ ի տունն Ա-
ստուծոյ։"

գիշեր սպառեցեր զիս։ (14) Իբրեւ զկռունկ, իբրեւ ծիծառն որ ճչէ՝ այնպէս ճչէի, իբրեւ աղաւնի՝ այնպէս մնչէի. նուաղեցան աչք իմ ի հայելոյ ի բարձունս. Տէր, տագնապ է ինձ, պաշտպան լեր ինձ։ (15) Զի՞նչ խօսեցայց. ինքն ասաց ցիս եւ արար. գնացից մեղմով զամենայն ամս իմ առ դառնութեան անձին իմոյ. (16) Տէր, սոքօք կեան մարդիկ, եւ յամենեսին ի սոսա են կեանք հոգւոյ իմոյ, ապա բժշկեա զիս եւ ապրեցո զիս։ (17) Ահա փոխանակ խաղաղութեան դառնութիւն ինձ, դառնութիւն. եւ դու փրկեցեր զանձն իմ ի գբոյ կորստեան. զի ընկեցեր յետոյ իմ զամենայն զմեղս իմ (18) Զի ոչ դժոխք խոստովան առնիցին առ քեզ, և ոչ մահ օրհնեսցէ զքեզ, ոչ յուսասցին որք իջանեն ի գուբ ի ճշմարտութիւն քո։ (19) Որ կենդանի է, որ կենդանի է՝ նա օրհնեսցէ զքեզ, որպէս ես այսօր. հայր պատմեսցէ որդւոց զճշմարտութենէ քումմէ։ (20) Տէր փրկութիւն իմ. եւ սաղմոսարանաւ իմով սաղմոսասցուք զամենայն աւուրս կենաց մերոց ի տուն Տեառն։

(21) Եւ ասացեալ էր Եսայի. Առցեն պաղատիտ թզոյ, և մանրեալ դիցեն ի վերայ վիրին, եւ ողջասցի։ (22) Եւ ասացեալ էր Եզեկիա, Զի՞նչ եղիցի նշան եթէ ելից ի տուն Տեառն։

Գլ. ԼԹ

1 Ի ժամանակին յայնմիկ առաքեաց Մա-
րովդաք Բաղդան որդի Բաղդանայ՝ ար-
քայ Բաբելացւոց, [1]հրեշտակս հրովար-
տակօք" եւ պատարագս Եզեկիայ. քան-
զի լուաւ թէ հիւանդացաւ [2]մերձ ի մահ"
2 եւ յարեաւ։ Եւ ուրախ եղեւ Եզեկիա
ի նոսա, եւ եցոյց նոցա զտունս գան-
ձուց եւ զխնկոց եւ զիւղոց եւ զոսկ-
ւոյ եւ զարծաթոյ, եւ զամենայն տունս
անօթոց գանձու, եւ զամենայն ինչ որ
էր ի գանձս իւր. եւ ոչ ինչ էր զոր ոչ
եցոյց նոցա Եզեկիա ի տան իւրում,
եւ յամենայն իշխանութեան իւրում։
3 Եւ եկն Եսայի մարգարէ առ արքայն Ե-
զեկիա եւ ասէ ցնա, Զի՞նչ ասեն արքդ
այդոքիկ, եւ ուստի՞ եկեալ են առ քեզ։
Եւ ասէ Եզեկիա, Յերկրէ հեռաստանէ
4 եկին առ իս ի Բաբելոնէ։ Եւ ասէ Ե-
սայի, Զի՞նչ տեսին ի տան քում։ Եւ
ասէ Եզեկիա, Զամենայն ինչ որ ի տան
իմում էր՝ տեսին, եւ ոչ ինչ էր ի տան
իմում զոր ոչ տեսին. այլ եւ զգանձս
5 եւս զիմ։ Եւ ասէ ցնա Եսայի, Արդ լուր
6 զպատգամս Տեառն զօրութեանց. Ահա
եկեսցեն աւուրք, եւ առնուցուն զա-
մենայն ինչ որ ի տան քում է, եւ զոր
ինչ միանգամ ժողովեցին հարքն քո
մինչեւ ցայսօր. տարցին ի Բաբելոն,
եւ մի՛ ինչ ամենեւին [3]թողուցուն. այլ
7 ասաց Աստուած, թէ" Եւ յորդւոց քոց
որ ելանիցեն ի քէն՝ զորս դուն ծնանի-
ցիս, տարցին եւ արասցեն ներքինիս ի
8 տան թագաւորին Բաբելացւոց։ Եւ ա-
սէ Եզեկիա ցԵսայի, Բարի է բանդ Տեառն
զոր [4]խօսեցաւ. եղիցի" արդարութիւն
եւ խաղաղութիւն յաւուրս իմ։

Գլ. Խ

1 Մխիթարեցէք, մխիթարեցէք զժողո-
վուրդ իմ, ասէ [5]Աստուած, քահանայք".
2 Խօսեցարուք ի սիրտ Երուսաղեմի եւ
[6]մխիթարեցէք զդա, զի լի եղեւ տառա-
պանօք. թողեալ լիցին" զմա մեղք իւր,
զի ընկալաւ ի ձեռանէ Տեառն կրկին
զհատուցումն մեղաց իւրոց։

[1] Եբր. թուղթս [2] Եբր. [illegible] [3] Եբր. մնասցէ, ասէ Տէր։ [4] Եբր. խօսեցար. եւ ասէ, Զի եղիցի [5] Եբր. Աստուած ձեր [6] Եբր. աղաղակեցէք առ նա թէ լցաւ զինուորութիւն նորա, զի թողաւ

3 Ձայն բարբառոյ յանապատի. Պատրաստ
արարէք զճանապարհս Տեառն, եւ ուղիղ
4 [1]արարէք զշաւիղս Աստուծոյ մերոյ: Ամե-
նայն ձորք լցցին, եւ ամենայն լերինք եւ
բլուրք խոնարհեսցին. եւ եղիցին ամենայն
գժուարինք ի դիւրինս, եւ տառապանքն ի
5 դաշտս: Եւ երեւեսցին փառքն Տեառն,
եւ տեսցէ ամենայն մարմին [2]զփրկու-
թիւն Աստուծոյ. զի Տէր՝ խօսեցաւ:
6 Ձայն որ ասէ, Գոչեա. եւ ասեմ, Զինչ
գոչեցից: Գոչեա՛, Ամենայն մարմին
խոտ է, եւ ամենայն փառք մարդոյ իբ-
7 րեւ զծաղիկ խոտոյ: Ցամաքեցաւ խոտն,
եւ թօթափեցաւ ծաղիկ նորա, զի ոգի
Տեառն շնչեաց ի նա. արդարեւ խոտ է
8 ժողովուրդս այս: Ցամաքեցաւ խոտն,
եւ թօթափեցաւ ծաղիկն. եւ բան [3]Տեառն
մնայ յաւիտեան:
9 Ել ի վերայ լերինդ բարձու, աւետա-
րանիչդ Սիոնի. բարձրացո զօրութեամբ
զբարբառ քո, աւետարանիչդ Երուսա-
ղեմի. [4]բարձրացուցէք, մի՛ երկնչիք՝.
ասա ցքաղաքդ Յուդայ, Ահաւասիկ
10 Աստուած ձեր. Ահաւասիկ Տէր Տէր գայ
զօրութեամբ եւ բազուկն տէրութեամբ
իւրով. ահաւասիկ վարձք իւր ընդ իւր,
11 եւ գործք առաջի նորա: Իբրեւ հովիւ
մի հովուեսցէ զխաշինս իւր, եւ բազ-
կաւ իւրով ժողովեսցէ զգառինս, եւ ի
ծոց իւր կրեսցէ զնոսա, եւ [5]մխիթար
լիցի յղեաց՝:
12 Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս, եւ
զերկինս թզաւ, եւ զերկիր ամենայն՝
քլաւ. ո՞ կշռեաց զլերինս կշռով, եւ
13 [6]զդաշտս կշռորդօք: Ո՞ [7]ցիտաց զմիտս՝
Տեառն, եւ ո՞ եղեւ նմա խորհրդակից՝
14 եթէ խելամուտ արասցէ զնա. կամ ընդ
ո՞ւմ խորհեցաւ, եւ արար զնա խելա-
մուտ, [8]կամ ո՞ եցոյց նմա զդատաստան
եւ զճանապարհ իմաստութեան, կամ ո՞
ետ նմա փոխ յառաջագոյն՝ եւ հատու-
15 ցանիցէ նմա: Եթէ՝ ամենայն հեթա-
նոսք իբրեւ զկաթիլ մի ի դուլէ են, եւ
իբրեւ [9]զմէտ մի ի կշռոց համարեցան,
եւ իբրեւ շիթք ի բերանոյ համարես-
16 ցին՝: Եթէ Լիբանան չէ բաւական յայ-
րումն, եւ ամենայն չորքոտանիք չեն
17 բաւական յողջակէզս. Եւ ամենայն հե-
թանոսք ոչինչ *են, եւ յոչինչ՝ համա-
րեցան նմա:
18 Արդ ո՞ւմ նմանեցուցէք [10]զՏէր, եւ ո-
րո՞ւմ նմանութեան նմանեցուցէք զնա:
19 [11]Միթէ պատկե՞ր կոփեաց զնա հիւսն,
կամ ոսկերի՞չ ձուլեաց ոսկի եւ պատեաց
զնա ոսկւով, ի նմանութիւն պատկերի
20 կերպարանեաց զնա: Զփայտ անփուտ
ընտրեաց հիւսն, եւ իմաստութեամբ
հնարս խնդրէ՝ զիա՞րդ կանգնեսցէ զնա
21 զի մի՛ շարժեսցի՝: Ո՞չ լուէք եւ ո՞չ ի-
մանայք, եւ ո՞չ պատմեցաւ ձեզ ի սկզ-
բանէ. ո՞չ գիտացէք [12]թէ ո՛ հաստատեաց
22 զհիմունս երկրի: Որ ունի զծիր՝ երկ-
րի, եւ բնակիչք նորա իբրեւ զմարախ.
որ կանգնեաց զերկինս իբրեւ զկամար,
եւ ձգեաց իբրեւ զխորան [13]եւ հաստա-
23 տեաց զերկիր՝ բնակել ի նմա: Որ տայ
զիշխանս յոչինչ [14]իշխանութիւն եւ զեր-
24 կիր իբրեւ զոչինչ արար: Զի ոչ սեր-
մանեսցեն եւ ոչ տնկեսցեն, եւ ոչ հաս-
տատեսցի յերկրի արմատ նոցա՝, շնչեաց
ի նոսա եւ ցամաքեցան. եւ փոթորիկ
25 իբրեւ զխոզիւ տարցէ զնոսա: Արդ ո՞ւմ
նմանեցուցէք զիս եւ զուգեցայց, ասէ
26 Սուրբն [13]Իսրայելի: Համբարձէք ի բար-
ձունս զաչս ձեր, եւ տեսէք՝ ո՛ հաս-
տատեաց զայս ամենայն, ո՛ հանէ զզարդ
նոցա, եւ զամենեսեան յանուանէ կոչէ
բազում փառօք եւ առատութեամբ զօ-
րութեան. եւ մի ինչ ոչ [15]ծածկեցաւ ի քէն:
27 Մի՛ ասիցես, Յակոբ, եւ զի՞նչ՝ խօսե-
ցար, Իսրայէլ, թէ Ծածկեցան ճանա-
պարհք իմ [16]յԱստուծոյ, եւ Աստուած իմ

[1] Եբր. արարէք յամայութեան [2] Եբր. միան-
գամայն. զի բերան Տեառն [3] Եբր. Աստուծոյ
մերոյ [4] Եբր. բարձրացո, մի՛ երկնչիր [5] Եբր.
զտառապեալսն վարեսցէ մեղմով [6] Եբր. զբլուրս
[7] Եբր. քննեաց զՀոգին [8] Եբր. եւ ուսոյց նմա
զճանապարհս դատաստանի, եւ ուսոյց նմա
զգիտութիւն, եւ զհանդամանս հանճարոյ ետ
նմա գիտել: (15) Ահա

[9] Եբր. զմանր փոշի կշռոյ համարեցան. ահա զկղզիս
իբրեւ զմղեղ վերացուսցէ [*] Եբր. են առաջի
նորա. պակաս քան զոչինչ և ունայնութիւն
[10] Եբր. զԱստուած [11] Եբր. Պատկեր կոփեաց հիւսն,
եւ ոսկերիչ պատեաց զայն ոսկւով. եւ շղթայս
արծաթիս յօրինեաց: (20) Որ աղքատն է տա-
նել այսպէս, ընտրէ փայտ անփուտ, խնդրէ
նմա ձեռագէտ ճարտար, պատրաստել դրօշ-
եալ որ ոչ շարժեսցի: [12] Եբր. ի հաստատու-
թենէ երկրի: (22) Նա է որ նստի ի ծիր [13] Յեբր.
պակասէ [14] Եբր. զդատաւորս երկրի առնէ ու-
նայնս: (24) Մինչեւ անկեալ իցէ նոցա, և
մինչեւ սերմանեալ իցէ, և մինչեւ ձգեալ
արմատ յերկրի բուն նոցա [15] Եբր. պակա-
սեսցէ: (27) Ընդէ՞ր ասացեր, Յակոբ, և [16] Եբր.
ի Տեառնէ

28 եբարձ զիրաւունս իմ, [1]Եւ մեկնեցան.
նա եւ այժմ ո՞չ ծանեար, եթէ չե՞ր
լուեալ, Աստուած յաւիտենական, Աս-
տուած՝ որ հաստատեաց զծագս երկ-
րի, ոչ քաղցիցէ եւ ոչ վաստակեսցի,
եւ չիք քննութիւն իմաստութեան նո-
29 րա։ Տայ [2]քաղցելոց զօրութիւն եւ սո-
30 ցաւոց զուարթութիւն։ Քաղցիցեն երի-
տասարդք, եւ վաստակեսցին մանկունք,
31 եւ ընտիրք անզօրք եղիցին։ Բայց որ
սպասեն Տեառն՝ նորոգեսցին զօրու-
թեամբ, նորափետուր զարգարեսցին իբ-
րեւ զարծուիս, ընթասցին եւ մի՛ վաս-
տակեսցին, գնասցեն եւ մի՛ [3]քաղցիցեն։

ԳԼ. ԽԱ

1 [4]Նորոգեցարուք առ իս կղզիք. զի իշ-
խանք նորոգեսցեն զօրութեամբ, մեր-
ձեսցին՝ խօսեսցին միանգամայն, եւ
2 ապա զիրաւունս պատմեսցեն։ Ո՞ զար-
թոյց յարեւելից զարդարութիւն, եւ կո-
չեաց զնա [5]զհետ իւր. երթիցէ եւ տա-
ցէ հատուցումն յանդիման հեթանոսաց.
զարհուրեցուսցէ զթագաւորս, եւ տացէ
հողոյ զսուրս նոցա, եւ իբրեւ զխաշ
3 մերժեսցէ զնետս նոցա։ Եւ արասցէ զնո-
սա փախստականս, եւ անցցէ խաղա-
ղութեամբ զճանապարհս ոտից իւրոց։
4 Արդ ասիցէ՞ք թէ ոչ գայցէ. ո՞ արգեաց՝
եւ արար զայս ամենայն, կոչեաց զնա՝
որ կոչէրն յազգաց առաջնոց։ Ես Տէր
առաջին, եւ ես նոյն եմ առ յապա։
5 Տեսին [6]զիս հեթանոսք եւ երկեան. եւ
ապաւեցին [7]ամենայն ծագք երկրի. մեր-
6 ձեցան եւ եկին ի միասին. [8]Եղին ի մար
իւրաքանչիւր ընդ ընկերի եւ ընդ եղ-
7 բօր օգնական լինել. եւ ասիցեն, Քա-
ջալերեսցէ հիւսն զդարբին, կռել կոփել,
ուռն հարկանել. եւ ասիցէ, Նպաստ բա-
րի եղեւ ինձ. եւ բեւեռեսցին զնոսա բե-
ւեռօք, եւ դիցեն ի դեղնի, եւ ոչ շար-
8 ժեսցին։ Բայց դու, Իսրայէլ ծառայ
իմ, Յակոբ՝ զոր ընտրեցի, զաւակդ Աբ-
9 րահամու՝ զոր սիրեցի, [9]Որում օգնա-
կան եղէ ի ծագաց երկրի, եւ ի դիտաց
նորա կոչեցի զքեզ, եւ ասացի՝ թէ Ծա-
ռայ իմ ես դու եւ ընտրեցի զքեզ, եւ
10 ոչ թողի զքեզ։ Մի՛ երկնչիր, զի ընդ
քեզ եմ. մի՛ [10]խաբիր, զի ես եմ Աստուած
քո, որ զօրացուցի զքեզ եւ օգնեցի քեզ,
եւ զրուցացայց քեզ աջով արդարութեան
11 իմոյ։ Ահաւասիկ ամաչեսցեն եւ պատ-
կառեսցեն ամենայն հակառակորդք քո,
եւ եղիցին նոքա իբրեւ զչեղեալս, եւ
կորիցեն ամենայն դատախազք քո։
12 Խնդրեսցես զնոսա, եւ ոչ գտցես զմարդն
որ թշնամանեսցեն զքեզ. եւ եղիցին իբ-
13 րեւ զչեղեալս[11] պատերազմողքն քո։ Զի
ես եմ Տէր Աստուած քո, որ ունիմ զա-
ջոյ ձեռանէ քումմէ, որ ասեմ ցքեզ՝
14 թէ Մի՛ երկնչիր, ես օգնեցից քեզ։ Մի՛
երկնչիր, որդնդ Յակոբեան, զաճաճդ
Իսրայէլեան. ես օգնեցի քեզ, ասէ [12]Աս-
տուած, որ փրկելոցն է զքեզ՝ Սուրբն
15 Իսրայէլի։ Ահաւասիկ արարից զքեզ իբ-
րեւ զանիւս նորս սղոցաձեւ կամնասայ-
լից. կասեսցես զլերինս եւ մանրեսցես
զբլուրս, եւ արասցես զնոսա իբրեւ զփո-
16 շի. Եւ հասեսցես[13]. հողմք առցեն զնոսա
եւ մրրիկք ցրուեսցեն. բայց դու ուրախ
լիցիս ի Տէր՝ [14]ի Սրբութիւնս Իսրայէլի։
17 [15]Եւ ցնծասցեն անանկք եւ կարօտեալք
որ խնդրէին ջուր եւ ոչ գտանէին, եւ
լեզուք նոցա ի ծարաւոյ ցամաքէին, ես
Տէր [7]Աստուած լուայց նոցա, Աստուած
18 Իսրայէլի, եւ ոչ թողից զնոսա։ Այլ բա-
ցից գետս ի վերայ լերանց, եւ ի մէջ
դաշտաց աղբերս. արարից զանապատն
ի ճահիճս ջուրց, եւ զերկիրն ծարաւուտ

[1]Եբր. Ո՞չ ծանեար, կամ ո՞չ լուար, Աստուած յաւիտենական Տէր, [2]Եբր. վաստակելոյ զօրութիւն, եւ որոյ չիք ոյժ՝ յաճախէ զօրութիւն։ (30) Վաստակեսցին մանկունք եւ խոնջեսցին [3]Եբր. խոնջեսցին [4]Եբր. Լռեսցեն առաջի իմ կղզիք, եւ ազգք նորոգեսցեն զզօրութիւն. մատիցեն, յայնժամ խօսեսցին, ի միասին ի դատաստան մատիցուք։ [5]Եբր. յոտս իւր. ետ առաջի նորա զհեթանոսս, եւ թագաւորաց ետ տիրել, ետ իբրեւ զփոշի առաջի սրոյ նորա, իբրեւ խաւի հոսեալ առաջի աղեղան նորա. (3) Հալածեաց զնոսա, եւ անց խաղաղութեամբ ընդ ճանապարհ յոր չէր մտեալ ոտիւք իւրովք։ (4) Ո՞ գործեաց եւ արար զայս. որ կոչէն զազգս ի սկզբանէ։ [6]Եբր. կղզիք [7]Եբր. դողաց [8]Եբր. Այր ընկերի իւրում եղեւ օգնական, եւ ցեղբայր իւր ասէ, Քաջալերեաց։ (7) Եւ քաջալերեաց դարբին զոսկերիչ, որ հարկանէն ուռամբ՝ զայն որ կռէ կոփէ. ասէ՝ Բարւոք է այս ի կցել. եւ պնդեաց զնա բեւեռօք զի մի՛ շարժեսցի։ [9]Եբր. Որ կալայ զքեզ ի ծագաց երկրի, եւ յեզերաց նորա կոչեցի զքեզ. եւ ասացի քեզ, [10]Եբր. զարհուրիր [11]Եբր. այլեւ յաւելու, իբրեւ ապառեալս [12]Եբր. Տէր [13]Եբր. այլեւ յաւելու զնոսա [14]Եբր. ի Սուրբն [15]Եբր. Տնանկք

19 ի ւտակս ։ [1]Եւ բղխեցուցից յանջրդի երկ-
րին զմայրն եւ զտօսախն, զմուրտն եւ
զնոճն եւ զսօսն, զարդն եւ զարայն
եւ զկաղամախն, զզին եւ զփայտն իւ-
20 ղոյ։" Զի տեսցեն եւ գիտասցեն եւ ծա-
նիցեն եւ իմասցին ի միասին՝ թէ ձեռն
Տեառն արար զայս ամենայն, եւ Սուրբն
Իսրայէլի հաստատեաց։
21 [2]Մերձեալ են իրաւունք ձեր, ասէ Տէր
Աստուած. մերձեալ են խրատք ձեր",
22 ասէ Թագաւորն Յակոբայ։ [3]Մերձես-
ցին եւ պատմեսցեն [4]ձեզ որ ինչ անցք
անցանելոց իցեն. [5]եւ կամ" զառաջինսն
եթէ զինչ էին՝ ասացէք. ի միտ դիցուք,
եւ գիտասցուք [6]զի՛նչ առաջին եւ զի՛նչ
23 առ յապա։ Ասացէք մեզ, պատմեցէք
մեզ" որ ինչ ի փոխճանի լինիցի, եւ գի-
տասցուք, եթէ աստուածք իցէք. բարի
արարէք, չար արարէք, զի [7]տեսցուք
24 միանգամայն եւ զարմասցուք՝ Թէ ուստի՛
իցէք դուք եւ ուստի՛ գործուած ձեր. զի
25 յերկրէ գիցծս ընտրեցին զձեզ։ Բայց ես
զարթուցից զհիւսիսայինն եւ զարեւել-
եայն. կոչեսցին յանուն իմ, եկեսցեն իշ-
խանք. եւ իբրեւ զկաւ բրուտի զոր բրուտն
26 կոխէ՝ այնպէս կոխիցիք։ Ո՞ պատմեսցէ
զայն՝ որ ի սկզբանէն է", զի գիտասցուք.
եւ զեւս յառաջագոյնն, եւ ասասցուք թէ
ճշմարիտ է. չիք որ [8]ասէ յառաջագոյն",
27 եւ ոչ որ լսէ զբանս ձեր։ [9]Սկիզբն ա-
ռաքից զՍիոն, եւ զԵրուսաղէմ մխի-
28 թարեցից ի ճանապարհի. Զի ի հեթանո-
սաց աւադիկ ոչ ոք է, եւ ի կռոց նոցա
ոչ ոք է որ պատմէ. եւ եթէ հարցից
նեւս զնոսա թէ Ուստի՞ էք, ոչ տացեն
29 ինձ պատասխանի։ Զի ընդունայն են
որ առնեն զձեզ, եւ մնոտի են որ ստեղ-
ծանեն զձեզ։"

ԳԼ. ԽԲ

1 [10]Յակոբ ծառայ իմ. օգնական եղէց
նմա, [5]Իսրայէլ ընտրեալ իմ զոր ընկա-
լաւ անձն իմ. ետու զՈգի իմ ի վերայ
նորա, եւ իրաւունս հեթանոսաց հան-
2 ցէ։ Մի՛ աղաղակեսցէ եւ մի՛ վիճեսցի,
եւ մի՛ ոք լուիցէ արտաքոյ զբարբառ
3 նորա։ Զեղէգն ջախջախեալ մի՛ բեկցէ,
եւ զպատրոյգն առկայծեալ մի՛ շիջուս-
ցէ, այլ հանցէ ի ճշմարտութիւն զիրա-
4 ւունս։ [11]Ծագեսցէ, եւ մի՛ խորտակեսցի,
մինչեւ դիցէ յերկրի զդատաստան, եւ՝
[12]յանուն նորա հեթանոսք" յուսասցին։
5 Այսպէս ասէ Տէր Աստուած՝ որ արար
զերկինս եւ կանգնեաց զնա, որ հաս-
տատեաց զերկիր եւ որ ի նմա, որ ետ
շունչ մարդկան որ ի վերայ նորա, ոգի
6 ամենեցուն որ կոխեն զնա։ Ես Տէր Աս-
տուած կոչեցի զքեզ արդարութեամբ,
կալայ զաջոյ ձեռանէ քումմէ եւ զօրա-
ցուցի զքեզ, եւ ետու զքեզ յուխտ ազ-
7 գին՝ եւ ի լոյս հեթանոսաց, Բանալ զաչս
կուրաց, հանել զկապեալս ի բանտէ եւ
ի տանէ կապանաց որ նստէին ի խաւա-
8 րի։ Ես [13]Տէր Աստուած", այս է անուն
իմ, զփառս իմ այլում ոչ տաց, եւ ոչ
9 [14]զքաջութիւնս իմ դրօշելոց։ Որ ինչ ի
սկզբանէն էր, այն եկն եհաս, եւ զնորս
ես պատմեցից ձեզ. եւ մինչչեւ պատ-
10 մեալ՝ [15]ցուցաւ ձեզ։ Օրհնեցէք զՏէր
յօրհնութիւն նոր, [16]զի իշխանութիւն
նորա ի բարձունս փառաւորի, եւ անուն
նորա" ի ծագաց երկրի, որք իջանեն ի
ծով [17]նաւօք, կղզիք եւ բնակիչք նոցա։
11 [18]Ուրախ եղիցի անապատն եւ աւանք
նորա՝ բանակք եւ բնակիչք Կեդարու".
ուրախ եղիցին բնակիչք Վիմին, ի գլխոց
12 լերանց գոչեսցեն, Տացեն փառս [19]Աս-
տուծոյ, եւ զքաջութիւն նորա կղզիք"

---

[1] Եբր. Տնկեցից յանապատին զեղեւին, զանփուտ փայտ (ատաին), եւ զմուրտն և զփայտն իւղոյ եդից յանջուր երկրին զմայր, զսօսի եւ զտօսախ ի միասին [2]Եբր. Մերձեցուցէք զդատ ձեր, ասէ Տէր. մատուցէք զպատճառս ձեր զզօրեղս [3]Եբր. Մերձեցուսցեն [4]Եբր. մեզ [5]Յ Եբր. գ—լ—ե [6]Եբր. զվախճան նոցա, կամ զինչ առ յապա՝ զգացուցէք մեզ։ (23) Պատմեցէք [7]Եբր. զարմասցուք եւ տեսցուք միանգամայն։ (24) Ահա ոչ ինչ էք դուք, եւ գործ ձեր ոչինչ է. գարշութիւն է որ ընտրեացն զձեզ։ (25) Զարթուցի ի հիւսիսոյ, եւ եկեսցէ. ի ծագաց արեւու կոչեսցէ զանուն իմ. եւ արասցէ զիշխանս իբրեւ զշաղախ, եւ իբրեւ բրուտ որ կոխեսցէ զկաւ։ (26) Ո՞ պատմեաց ի սկզբանէ [8]Եբր. պատմեսցէ, չիք որ տացէ լսել [9]Եբր. Առաջինն եմ զՍիոն. Ահա, ահաւասիկ նոքա, եւ ցԵրուսաղէմ՝ Տաց աւետարանիչ։ (28) Եւ հայեցայ, եւ ոչ ոք էր. եւ ի նոցանէ չգոյր խորհրդական, եթէ հարցանէի զնոսա, և տային պատասխանի։ (29) Ահա ամենեքին ընդունայն են, ոչնչի՝ գործ նոցա, հողմ եւ ունայնութիւն են ձուլածոյք նոցա։ [10]Եբր. Ահաւասիկ [11]Եբր. Մի՛ շիջցի [12]Եբր. յօրէնս նորա կղզիք [13]Եբր. Եհովայ եմ [14]Եբր. զգովութիւն [15]Եբր. զգացուցի [16]Եբր. եւ զգովութիւն նորա [17]Եբր. եւ որ լնուն զնա [18]Եբր. Ձայն բարձցեն անապատն եւ քաղաքք նորա, աւանք յորս բնակէ Կեդար [19]Եբր. Տեառն, և զգովութիւն նորա ի կղզիս

13 պատերազմացն ։ Տէր [1]Աստուած զօրու-
թեանց ելեալ եւ հարցէ զպատերազմ,՛՛
յարուսցէ զնախանձ [2]եւ գոչեսցէ, ի վե-
րայ թշնամեաց իւրոց [3]զօրութեամբ ։
14 Լռեալ եղէ ի սկզբանէ, [4]միթէ մի՞շտ լռե-
ցից եւ անսայցեմ. ժուժկալեցի իբրեւ
զծննդական՛՛, այժմ զարհուրեցուցից եւ
15 ցամաքեցուցից միանգամայն ։ Զլերինս
եւ զբլուրս յաւերեցից, եւ զամենայն
խոտ նոցա ցամաքեցուցից. եդից զգետս
16 ի կղզիս, եւ զխաղս ցամաքեցուցից ։ Ա-
ռաջնորդեցից կուրաց ընդ ճանապարհ
զոր ոչ գիտիցեն, եւ ընդ շաւիղս՝ զոր
ոչ ճանաչէին՝ գնացուցից զնոսա. արա-
րից նոցա զխաւարն ի լոյս, եւ զդժուա-
րինն ի դիւրին. զայս բանս արարից
առ նոսա, եւ ոչ թողից զնոսա ։
17 [5]Բայց նոքա դարձան յետս յետս. Ա-
մաչեցէք զամօթ մեծ որք յուսացեալդ
էք ի դրօշեալս, եւ ասէք՛՛ ձուլածոյս,
թէ Աստուածք մեր էք դուք ։
18 Խուլք, լուարուք, եւ կոյրք, հայեցա-
19 րուք տեսանել ։ Եւ ո՞վ է կոյրն եթէ
ոչ ծառայն իմ, եւ [6]ո՞վ են խուլքն ե-
թէ ոչ որ տիրեն նոցա՛՛ ։ Ո՞վ է կոյրն
եթէ ոչ [7]հնազանդեալն, եւ կուրացան ծա-
20 ռայքն Աստուծոյ ։ Տեսէք բազում ան-
գամ, եւ ոչ զգուշացարուք. բաց էին
21 ականջք ձեր, եւ ոչ լուարուք ։ Տէր Աս-
տուած կամէր՝ զի արդարասցի եւ բարձ-
22 րասցուսցէ զօրհնութիւն ։ Եւ տեսի զի
եղեւ ժողովուրդն՛՛ յափշտակեալ եւ յա-
ւար մատնեալ. յամենայն ի շտեմարանս
որոգայթք, եւ յամենայն տարապանս
միանգամայն՝ ուր եւ թաքուցին զնո-
սա, եղեն ի յափշտակութիւն, եւ ոչ ոք
էր որ փրկէր զնոսա. յաւարի եւ ոչ ոք էր
23 որ ասէր թէ Տուր ի դարձ ։ Ո՞վ է ի
ձէնջ որ ունկնդիր լինիցի այսմ ամե-
նայնի, եւ ի միտ առնուցու որ ինչ յա-
24 պայն գալոց իցէ ։ Ո՞վ ետ յափշտակու-
թիւն զՅակոբ, եւ զԻսրայէլ աւարա-
ռուաց. ո՞չ ապաքէն [8]Աստուած՝ որում
մեղանն, եւ ոչ կամեցան գնալ ընդ ճա-
նապարհս նորա, եւ ոչ լսել օրինաց նո-
25 րա ։ Եւ [9]ած ի վերայ նորա զսրտմտու-
թիւն բարկութեան իւրոյ. եւ [10]պատահեաց
զնոսա պատերազմ, եւ շուրջ զնովօք
հրձիգք. եւ ոչ գիտացին իւրաքանչիւր ոք
ի նոցանէն, եւ ոչ եդին ի միտ՛՛ ։

ԳԼ. ԽԳ

1 Եւ արդ այսպէս ասէ Տէր [11]Աստուած
որ արար զքեզ, Յակոբ, եւ որ ստեղծ
զքեզ, Իսրայէլ. Մի՛ երկնչիր զի փրկեցի
զքեզ, եւ կոչեցի քեզ զանուն քո՝ թէ
2 իմ ես ։ Եւ եթէ անցանիցես ընդ ջուր՝
ընդ քեզ եմ, եւ գետք զքեզ մի՛ ողո-
ղեսցեն. եւ եթէ անցանիցես ընդ հուր՝
մի՛ այրեսցիս, եւ բոց նորա զքեզ մի՛
3 կիզցէ ։ Զի ես եմ Տէր Աստուած քո
Սուրբն Իսրայէլի որ փրկեմ զքեզ. ա-
րարի փոխանակ քո զԵգիպտոս եւ զԵ-
թովպիա. եւ [12]զՍուհէն քեզ փոխանա-
4 կեցի ։ Ուստի եւ պատուական եղեւ ա-
ռաջի իմ եւ փառաւորեցար. եւ
ես սիրեցի զքեզ. եւ տաց զմարդիկ փո-
խանակ քո, եւ [13]զիշխանս փոխանակ
5 գլխոյ քո ։ Մի՛ երկնչիր զի ընդ քեզ
եմ. յարեւելից ածից զզաւակ քո, եւ
6 յարեւմտից ժողովեցից զքեզ ։ Ասացից
հիւսիսոյ՝ Ած. եւ հարաւոյ՝ թէ Մի՛ ար-
գելուր. ածէք զորդիս իմ յերկրէ հեռա-
ւորէ, եւ զդստերս իմ ի ծագաց երկ-
7 րէ, Եւ զամենեսեան որ միանգամ կո-
չեցեալ են յանուն իմ. զի փառօք իմովք
հաստատեցի զնա եւ ստեղծի զնա եւ
արարի զնա ։
8 [14]Եւ հանի զժողովուրդն կոյր, եւ թէ-
պէտ եւ աչք են, սակայն նոյնպէս կու-
րացեալ են, եւ խցեալ են ականջք ի-
9 րեանց՛՛ ։ Ամենայն ազգք ժողովեցան ի
միասին, եւ [15]իշխանք ժողովեսցին ի նո-
ցանէ. ո՞՛՛ պատմեսցէ զայս, եւ կամ
որ ինչ ի սկզբանէն էր՝ ո՞ ազդ արաս-

---

[1]Ոմն. իբրեւ Հզօր ելցէ, իբրեւ այր պատերազ-
մող [2]Ոմն. աղաղակեսցէ եւ [3]Ոմն. զօրացի
[4]Ոմն. լռեցի և անսացի. այժմ իբրեւ զծննդական
գոչեցից [5]Ոմն. Դարձցին յետս եւ ամաչեսցեն
զամօթ մեծ որք յուսացեալ են ի դրօշեալս,
և ասեն [6]Ոմն. խուլն՝ իբրեւ զպատգամաւորն
իմ զոր առաքեմ [7]Ոմն. Նուիրեալն, եւ կոյրն՝
իբրեւ զծառայն Տեառն։(20)Տեսանես բազում
ինչ, եւ ոչ առնուս ի միտ. բաց են ականջք,
եւ ոչ լսեն։ (21)Տէր հաճեցաւ վասն արդարու-
թեան իւրոյ, մեծացուցանել զօրէնս եւ փա-
ռաւորել։ (22) Եւ նա ժողովուրդ

[8]Ոմն. Տէր [9]Ոմն. թափեաց [10]Ոմն. զսաստ-
կութիւն պատերազմի, եւ շուրջ զնովաւ
արար հրձիգ. այլ նա ոչ գիտաց. հուր հար
ի նմա, եւ նա ոչ եդ ի սրտի [11]Յոմն. պակասէ
[12]Ոմն. զՍաբա [13]Ոմն. զժողովուրդս [14]Ոմն.
Հան զժողովուրդն կոյր. թէպէտ եւ են նոցա
աչք, զխուլս՝ թէպէտ եւ ականջ են նոցա ։
[15]Ոմն. գումարեցան ժողովուրդք. ո՞ ի նոցանէ

ցէ ¹ձեզ. ածցեն զվկայս իւրեանց եւ
արդարասցին, լուիցեն եւ ասասցեն
10 զճշմարիտն։ Եղերուք ինձ վկայք ²եւ ես
ձեզ վկայ, ասէ Տէր Աստուած", եւ
ծառայ իմ զոր ընտրեցի. զի գիտասջիք
եւ հաւատասջիք ինձ, եւ ի միտ առ-
նուցուք թէ ես եմ. յառաջ քան զիս
ոչ եղեւ այլ Աստուած, եւ յետ իմ ոչ
11 եղիցի։ ³Ես եմ Աստուած", եւ չիք որ
12 բաց յինէն որ փրկիցէ։ ⁴Պատմեցի եւ
փրկեցի. նախատեցի" եւ ոչ որ էր ի
միջի ձերում օտար. դուք ինքնին իսկ
13 վկայք ⁵ինձ։ Եւ ես Տէր Աստուած ի
սկզբանէ, եւ եւս", եւ ոչ ոք իցէ որ ի
ձեռաց իմոց հանիցէ. եւ արարից, եւ
ոչ ոք իցէ որ դարձուսցանիցէ։
14 Այսպէս ասէ ⁶Տէր Աստուած, որ փրկե-
լոցն է զձեզ" Սուրբն Իսրայելի. Վասն ձեր
առաքեցից ի Բաբելոն, եւ ⁷ընդոստուցի
փախստականս զամենեսեան. եւ Քաղդէա-
15 ցիքն նաւուք պաշարեսցին. Ես Տէր Աս-
տուած Սուրբն ձեր, որ յայտ արարի ձեզ
16 զԹագաւորն Իսրայելի" Այսպէս ասէ Տէր
որ արար ճանապարհ ընդ ծով եւ ի ջուրս
17 սաստիկս շաւիղս, Որ հանէ զկառս եւ
զերիվարս ⁸եւ բազում զօրս սաստիկս.
այլ" ննջեցին եւ ոչ յարիցեն, շիջան
18 իբրեւ զպատրոյգ շիջեալ. Մի՛ յիշէք
զառաջինսն, եւ զհինսն մի՛ ածէք զմտաւ.
19 Զի ես աւասիկ նոր գործեմ, որ այժմ
յայտնեսցի եւ ծանիջիք. եւ արարից
ճանապարհ ընդ անապատ, եւ յերկիր
20 անջրդի գետս բղխեցուցից։ Օրհնեսցեն
զիս գազանք անապատի, համբարուք
եւ դստերք ջայլամանց. զի ետու ես
ջուր յանապատ եւ գետս յերկիր անջրդի,
21 արբուցանել զազգն իմ ընտրեալ, Եւ
զժողովուրդն իմ զոր ստացայ՝ պատմել
զքաջութիւնս իմ։
22 ⁹Ոչ այժմ ինչ կոչեցի զքեզ, Յակոբ,
եւ ոչ աշխատ արարի զքեզ", Իսրայէլ.
23 Ոչ մատուցեր ինձ խաշինս ողջակիզաց
քոց, եւ ոչ զոհիւք քովք փառաւորե-
ցեր զիս. ոչ ¹⁰ծառայեցեր ինձ պատա-
րագօք քովք", եւ ոչ աշխատ արարի
24 զքեզ ի ծախս կնդրկոյ քոց։ Ոչ գնե-
ցեր ինձ խունկս արծաթոյ, եւ ոչ ¹¹ցան-
կացայ ճարպոյ զոհից քոց. այլ ի մեղս
քո եւ յանօրէնութիւնս քո վերակացու
25 եղէց քեզ"։ Ես եմ, ես եմ նոյն որ ջնջեմ
զանօրէնութիւնս քո վասն իմ, եւ զմեղս
26 քո այլ ոչ եւս յիշեցից։ ¹²Բայց քեզ յուշ
լիցի՛ եւ ընդ միմեանս դատեսցուք. ա-
սա դու նախ զանօրէնութիւնս քո զի
27 արդարասցիս։ Հարքն ձեր նախ մեղան,
28 եւ իշխանքն ձեր անօրինեցան յիս, Եւ
պղծեցին իշխանքն զսրբութիւնս իմ".
եւ մատնեցի ի կորուստ զՅակոբ, եւ
զԻսրայէլ ի նախատինս։

ԳԼ. ԽԴ

1 Բայց արդ լուր, Յակոբ ծառայ իմ,
2 եւ Իսրայէլ, զոր ընտրեցի։ Այսպէս
ասէ Տէր ¹³Աստուած որ արար զքեզ, եւ
որ ստեղծ զքեզ յորովայնէ, եւ տակա-
ւին օգնականութիւն գտցես. մի՛ երկըն-
չիր, ծառայ իմ Յակոբ, եւ սիրեցեալդ
3 իմ Իսրայէլ, զոր ընտրեցի. Զի ես ¹⁴տաց
ջուր ի ծարաւ որոց գնան յանջրդւոջ.
եդից" զՈգի իմ ի վերայ զաւակի քո՛ եւ
զօրհնութիւնս իմ ի վերայ որդւոց քոց։
4 Եւ զուարճասցին ¹⁵իբրեւ զխոտ ջրար-
բի", եւ որպէս ուռ ի մէջ գնացից ջրոց։
5 Մին ասասցէ, ¹⁶Աստուծոյ եմ ես, եւ
միւսն խրախոյս բարձցէ յանուն ¹³Աս-
տուծոյ Յակոբայ. եւ միւսն գիր հան-
ցէ ձեռամբ իւրով ¹⁶Թէ Աստուծոյ եմ
ես", եւ յանուն Իսրայելի ¹⁷խրախոյս
բարձցէ"։
6 Այսպէս ասէ ¹⁸Աստուած Թագաւորն
Իսրայելի, եւ ¹⁹որ փրկեացն զնա Աս-
տուած" զօրութեանց. Ես առաջին՛ եւ
ես առ յապայ, բաց յինէն այլ ոչ գոյ

¹Եբր. մեզ ²Եբր. ասէ Տէր ³Եբր. Ես, ես եմ Տէր ⁴Եբր. Ես պատմեցի և փրկեցի և ցուցուցի, ⁵Եբր. ինձ, ասէ Տէր, և ես եմ Աստուած, (13) Ի սկզբանէ անտի ես նոյն եմ ⁶Եբր. Տէր, Փրկիչ ձեր ⁷Եբր. իջուցանեմ զամենեսին փախստականս, զՔաղդէացիսն, ի նաւս ուրախութեան իւրեանց. (15) Ես, Տէր, Սուրբն ձեր, Արարիչն Իսրայելի, Թագաւոր ձեր։ ⁸Եբր. զօրութիւն և ուժգնութիւն. միանգամայն ⁹Եբր. Եւ ոչ կոչեցեր զիս, Յակոբ, այլ տաղտկացար յինէն

¹⁰Եբր. ծառայեցուցի զքեզ պատարագօք ¹¹Եբր. յագեցուցեր զիս ճարպով զոհից քոց, այլ ծառայեցուցեր զիս ի մեղս քո, և աշխատ արարեր զիս յանօրէնութիւնս քո ¹²Եբր. Յուշ արա ինձ, զի ի միասին դատեսցուք. պատմեա դու զի արդարասցիս (27) Հայր քո նախ մեղաւ, և թարգմանք քո անօրինեցան յիս (28) Եւ ես պղծեցի զիշխանս սրբութեան ¹³Եբր. [illegible] ¹⁴Եբր. հեղից ջուր ի ծարաւին, և հոսանս յանջրդւոջ հեղից ¹⁵Եբր. ի մէջ խոտոց ¹⁶Եբր. Տեառն ¹⁷Եբր. յորջորջեսցի ¹⁸Եբր. Տէր, ¹⁹Եբր. Փրկիչ նորա, Տէր

7 Աստուած ։ [1]Ո՞վ է իբրեւ զիս, յառաջ
կացցէ, ձայն տացէ, պատմեսցէ եւ պատ-
րաստեսցէ ինձ՝ յորմէ հետէ արարի
զմարդն յաւիտեան. եւ որ ինչ գալոցն
իցէ, մինչչեւ եկեալ իցէ պատմեսցեն
8 ձեզ։" Մի՛ զարմանայք եւ մի՛ պատկա-
ռէք. ո՞չ ապաքէն [2]ի սկզբանէ լուա-
րուք" եւ պատմեցի ձեզ. դուք ձեզէն
իսկ վկայէք ինձ, թէ գուցէ՞ այլ Ա-
9 ստուած բաց [3]յինէն։ Եւ յայնժամ իսկ
ոչ ինչ էին ամենեքեան որ տաշածանէին
եւ դրօշէին զնոտիսն, որ առնէին ըստ
ցանկութեան իւրեանց, որք ոչ օգնի-
ցեն նոցա. եւ վկայք դուք էք նոցա.
10 զի ոչ տեսանեն եւ ոչ իմանան։ Զի ա-
մաչեսցէ որ տաշածանէ զաստուածն",
11 եւ ձուլէ զդրօշեալն յանօգուտ, Եւ ա-
մենեքին որ հաղորդեցին [4]նմա. այլ
ամաչեսցեն ամենեքեան որ տաշածա-
նեն կուռս, եւ դրօշեն զանօգուտսն.
եւ ամենեքեան ուստի եղենն՝ ցամա-
քեսցին, խլացեալք" ի մարդկանէ. ժո-
ղովեսցին ամենեքեան՝ յանդիման կայ-
ցեն ի միասին. ամաչեսցեն եւ յամօթ
12 լիցին առ հասարակ։ [5]Զի թեքեաց հիւսն
զգործի իւր, ուրագ սրեաց եւ կոփեաց
նովաւ. գրով գործեաց եւ դրօշեաց
զնա, եւ զօրութեամբ բազկի իւրոյ
կանգնեաց զնա. քաղցիցէ եւ տկարա-
13 ցի, եւ ոչ արբցէ ջուր։ Ընտրեաց հիւսն
փայտ, չափով կշռեաց զնա՝ եւ դրօ-
շեաց ի նմանութիւն պատկերի. գրով
կարգեաց զնա, եւ մածոյց սոսնձով, եւ
արար զնա ի պատկեր առն եւ ի զարդ
գեղոյ երեսաց մարդոյ. հաստատեաց
14 զնա ի տան իւրում։ Զայն փայտ զոր
եհատ, զսարոյն կամ զսօսն, զկաղնին
կամ զթեղօշն, զոր անկեաց Տէր եւ
15 աճեցոյց անձրեւ՝ Զի իցէ մարդկան այ-
րել, առեալ ի նմանէ այրեաց եւ ջե-
ռաւ, եւ ի կիսոյն արար հաց, եւ զկէսն
արար պատկեր եւ երկիր եպագ նոցա.
եւ զոր իւրովին պատկեր գործեաց,
անկեալ առաջի այնմ երկիր պագանէ։
16 Զորոյ զկէսն այրեաց ի խարուկի, եւ
եփեաց կայծականբք նորա հաց եւ խո-
րովեաց միս, կերաւ եւ յագեցաւ եւ
ջեռաւ," եւ ասէ՝ Վա՜շ ինձ զի ջեռայ
17 եւ տեսի զկրակ։ Եւ [6]զկէսն արար յաս-
տուած դրօշեալ. եւ խոնարհեալ երկիր
եպագ նմա. յաղօթս կայ առ նա եւ ա-
սէ, Փրկեա զիս, զի աստուած իմ ես
18 դու։ Ոչ ածին ի միտ իմանալ, զի շլա-
ցան տեսանել աչօք իւրեանց, եւ իմա-
19 նալ սրտիւք իւրեանց։ [7]Եւ ոչ ածին
զմտաւ զի ոչ ծանեան խորհրդովք՝ թէ
զկէս փայտին այրեցին ի հուր, եւ ի
վերայ կայծականց նորա հաց արարին,
եւ միս խորովեցին եւ կերան, եւ զկէսն
ի նմանէ արարին պատկեր եւ երկիր
20 պագանեն նմա։ Գիտասջիր զի մոխիր
է սիրտ նոցա, եւ մոլորեալ են. եւ ոչ
ոք ի նոցանէ կարէ փրկել զանձինս նո-
ցա. տեսէք եւ ոչ ասացէք՝ թէ Խա-
բէութիւն է ի ձեռս մեր։"
21 Յուշ լիցի քեզ այդ, Յակոբ, եւ Իս-
րայէլ, զի ծառայ իմ ես դու. ինձ ստեղ-
ծի զքեզ ի ծառայութիւն. եւ Իսրայէլ,
22 [8]մի՛ մոռանար զիս". Զի ահաւասիկ ջնջե-
ցի իբրեւ զամպ զանօրէնութիւնս քո,
եւ իբրեւ զմէգ զմեղս քո. դարձ առ
իս, եւ փրկեցից զքեզ։

---

[1]Եբր․ Եւ ո՞ իբրեւ զիս ձայն տա եւ պատմեաց, եւ յարդարեաց զայն ինձ, յորմէ հետէ հաստատեցի ես զժողովուրդն հին. թող պատմեն զորս գալոցն եւ լինելոց իցեն։ [2]Եբր․ ի վաղուց հետէ լսել [3]Եբր․ յինէն. եւ ոչ Վէմ. ոչ գիտացի։ (9) Որ տաշածանեն դրօշեալ՝ ամենեքին ընդունայն են, եւ ցանկալիք նոցա՝ անօգուտ. եւ վկայք նոցա նոքին իսկ. ոչ տեսանեն եւ ոչ իմանան զի ամաչեսցին։ (10) Ո՞վ է որ տաշածանէ աստուած [4]Եբր․ նմա՝ ամաչեսցեն, զի ձեռագործքն իսկ են [5]Եբր․ Դարբին երկաթոյ գործեաց տապար ածխով, եւ յօրինեաց զայն կռանաւ, եւ գործեաց զնա բազկաւ զօրութեան իւրոյ. իբրեւ քաղցիցէ, տկարասցի. ոչ արբցէ ջուր, եւ նուաղեսցի։ (13) Ատաղձագործ ձգէ լար, նշանակէ զնա գրչաւ, տաշէ զնա գրով, եւ կարկինաւ չափէ զնա, եւ արար զնա ի պատկեր առն, ի զարդ գեղոյ երեսաց մարդոյ առ ի բնակելոյ ի տան։ (14) Հատանէ իւր եղեւինս, եւ առնու թեղօշ եւ կաղնի, եւ զօրացուցանէ զանձն ի փայտս անտառին. տնկէ սօճի եւ անձրեւ աճեցուցանէ. (15) Եւ լինի մարդկան այրելի. եւ առնու ի նոցանէ եւ ջեռնու, այլ եւ վառէ եւ եփէ հաց. նա եւ յօրինէ աստուած, եւ երկիր պագանէ նմա, առնէ զնա դրօշեալ եւ պաշտէ զնա։ (16) Զկէս նորա այրէ ի խարուկի. ի վերայ կիսոյն ուտէ միս, խորովէ խորովածս, եւ յագենայ. եւ ջեռնու եւս, [6]Եբր․ զմնացորդ նորա [7]Եբր․ Եւ ոչ ածէ զմտաւ. եւ չիք գիտութիւն եւ ոչ հանճար ասել թէ Զկէս փայտին այրեցի ի հուր, նա եւ եփեցի ի վերայ կայծականց նորա հաց. խորովեցի միս եւ կերայ, եւ զմնացորդ նորա արարի՞ց ի գարշութիւն. զկոճղ փայտին պաշտեցե՞մ։ (20) Ճարակի մոխրով, սիրտ խաբեալ խոտորեցոյց զնա, եւ ոչ փրկեսցէ զանձն իւր եւ ոչ ասիցէ, Ո՞չ ապաքէն ստութիւն է յաջ իմ։ [8]Կամ, մի՛ մոռացցիս յինէն

23 Ուրախ լերուք, երկինք, զի [1]ողոր-
մեցաւ Աստուած Իսրայէլի". փող հա-
րէք, հիմունք երկրի. գոչեցէք, լերինք,
զուարճութիւն, [2]բլուրք և ամենայն
ծառք որ ի նոսա. զի փրկեաց [3]Աստուած
զՅակոբ, և Իսրայէլ" փառաւորեսցի:
24 Այսպէս ասէ Տէր որ փրկեաց զքեզ
և ստեղծ զքեզ յորովայնէ. Ես եմ Տէր
որ առնեմ [4]կատարեմ զամենայն. ձգե-
ցի զերկինս միայն, և հաստատեցի
25 [5]զերկիր: Ո՞ այլ ոք ցրեաց" զնշանս վհկաց,
և [6]զգուշութիւնս ի սրտից". ո՞ դարձու-
ցանէ զիմաստունս յետս, և զխոր-
26 հուրդս նոցա յիմարեցուցանէ, և հաս-
տատէ զբանս ծառայից իւրոց, և զխոր-
հուրդս հրեշտակաց իւրոց արդարացու-
ցանէ: Ես եմ որ ասեմ ցԵրուսաղէմ
թէ Բնակեսջիր, և ցքաղաքս Հրէաս-
տանի՝ թէ Շինեսջիք աւերածս. և զա-
27 ւերակս նորա կանգնեցից. Որ ասեմ
ցանդունդս թէ [7]Աւերեսջիր, և զգետս
28 նորա" ցամաքեցուցից. Որ ասեմ ցԿիւ-
րոս թէ [8]Իմաստնասջիր, և զամենայն
կամս իմ արասցես. որ ասեմ ցԵրու-
սաղէմ թէ Շինեսջիր, և [9]զտաճարն իմ
սուրբ հաստատեցից":

ԳԼ. ԽԵ

1 Այսպէս ասէ Տէր [4]Աստուած օծելոյն
իւր ցԿիւրոս, զորոյ կալայ զաջոյ ձե-
ռանէ նորա հնազանդեցուցանել առաջի
նորա զազգս, և [10]զզօրութիւն թագա-
ւորաց խորտակեցից". և բացից առա-
ջի նորա [11]զդրունս, և քաղաքք" մի՛
2 փակեսցին: Ես երթայց առաջի քո,
զլերինս հարթեցից, զդրունս պղնձիս
խորտակեցից և զնիգս երկաթիս փշրե-
3 ցից. Եւ տաց քեզ զգանձս խաւարինս,
և զուանդս աներևոյթս [4]բացից քեզ".
զի ծանիցես թէ ես եմ Տէր [4]Աստուած,
որ կոչեցի զանուն քո՝ Աստուած Իս-
4 րայէլի: Վասն Յակոբայ ծառայի իմոյ,
և Իսրայէլի ընտրելոյ իմոյ՝ [12]ես կոչե-
ցից քեզ զանուն քո՝ և ընկալայց զքեզ:
5 Եւ դու զիս ոչ ծանեար՝ եթէ ես Տէր
6 Աստուած, և չիք այլ ոք. Եւ" ծանի-
ցեն յարևելից և յարևմտից թէ չիք
7 ոք բաց [13]յինէն: Ես եմ որ հաստատե-
ցի զլոյս և արարի զխաւար, ես եմ որ
առնեմ զխաղաղութիւն և հաստատեմ
զչար. ես եմ Տէր [4]Աստուած՝ որ առ-
նեմ զայս ամենայն:
8 [14]Ուրախ եղիցին" երկինք ի վերուստ,
և ամպք ցօղեսցեն զարդարութիւն.
[15]բղխեսցէ երկիր զողորմութիւն, և
զարդարութիւն առ հասարակ բղխես-
ցէ". ես եմ Տէր որ [16]հաստատեցի զքեզ
իբրև զյուռ ինձ. ստեղծի զքեզ իբրև
9 զկաւ բրուտի: Միթէ զօ՞րն ամենայն հեր-
կիցէ որ հերկէն զերկիր. միթէ ասիցէ՞
կաւն ցբրուտն, Զի՞ կաս՝ զի՞ ոչ գոր-
ծես, չիք քո ձեռք. միթէ ասիցէ՞ ստեղ-
ծուածն ցստեղծիչն իւր՝ թէ Ընդէ՞ր այս-
10 պէս ստեղծեր զիս: Վա՜յ որ ասիցէ ցհայր
իւր՝ թէ Ընդէ՞ր ծնար զիս, և ցմայր
11 իւր՝ թէ Ընդէ՞ր երկնեցեր զիս Զի այս-
պէս ասէ Տէր Աստուած՝ Սուրբն Իս-
րայէլի, որ արար զայնս որ յապայն գա-
լոց են. Հարցէք զիս վասն որդւոցն ի-
մոց և դստերաց," և վասն գործոց
12 ձեռաց իմոց պատուէր տուք ինձ: Ես
արարի զերկիր և զմարդն ի վերայ նո-
րա, ես ձեռամբ իմով հաստատեցի զեր-
կինս, ես ամենայն աստեղաց ետու հրա-
13 ման: Ես յարուցի զնա արդարութեամբ
[17]թագաւոր, և ամենայն ճանապարհք
նորա ուղիղ են". նա շինեսցէ զքաղաքն
իմ, և զգերութիւն ժողովրդեան իմոյ
դարձուսցէ, ոչ կաշառօք և ոչ պատա-
րագօք, ասէ Տէր զօրութեանց:
14 Այսպէս ասէ Տէր [18]զօրութեանց. Վաս-
տակ եգեր երկրին" Եգիպտացւոց, և

---

[1] Եբր. արար զայս Տէր [2] Եբր. անտառք [3] Եբր. Տէր զՅակոբ, և յԻսրայէլի [4] Յեբր. պակասէ [5] Եբր. զերկիր ինձէն. (25) Որ խորտակէ [6] Եբր. ըղձից տայ մոլել [7] Եբր. Ցամաքեսջիր, և զգետս քո [8] Եբր. Հովիւ իմ ես [9] Եբր. ցտաճարն, թէ Հաստատեսջիր [10] Եբր. զմէջս թագաւորաց թուլացուցից [11] Եբր. զփեղկս, զի դրունք [12] Եբր. ես կոչեցի զքեզ յանուանէ, ետու քեզ անուն յորջորջանաց, թէպէտ և ոչ ճանաչէիր զիս: (5) Ես եմ Տէր, և ոչ այլ ոք. բաց յինէն չիք Աստուած. ածի քեզ գօտի, թէպէտև ոչ ճանաչէիր զիս. (6) Զի [13] Եբր. յինէն, ես եմ Տէր, և ոչ այլ ոք [14] Եբր. Տեղացէք, [15] Եբր. բացցի երկիր, և տացէ պտուղ փրկութեան, և զարդարութիւն բուսուսցէ միանգամայն [16] Եբր. արարի զայս:
(9) Վա՜յ որ հակառակի ընդ իւրում Արարչին. խեցի է նա իբրև զխեցիս հողոյ. միթէ ասիցէ՞ կաւն ցյօրինիչ իւր, Զի՞նչ գործես, կամ գործ քո ցքեզ թէ՝ Չիք քո ձեռն: (10) Վա՜յ որ ասիցէ ցհայր, Զի՞նչ ծնանիս. և ցմայր թէ Զի՞նչ երկնես:
(11) Այսպէս ասէ Տէր՝ Սուրբն Իսրայէլի և Արարիչ նորա. Զորս գալոցն են՝ հարցէք ցիս, վասն որդւոցն իմոց [17] Եբր. և զամենայն ճանապարհս նորա ուղղեցից [18] Եբր. Վաստակ

վաճառք Եթովպացւոց եւ [1]Սաբայե-
ցիքն արք մեծամեծք՝ առ քեզ անց-
ցեն, եւ [2]քեզ ծառայեսցեն, եւ՝ զկնի
քո շրջեսցին՝ [3]կապեալք ձեռնակապօք եւ
առ քեզ եկեսցեն՝, եւ քեզ երկիր պագա-
նիցեն, [4]եւ ի քեզ ուխտադիր լինիցին.
զի ի քեզ Աստուած գոյ. եւ ասասցեն
թէ Ոչ գոյ այլ Աստուած բաց ի քէն.
15 Զի դու ես Աստուած՝ եւ մեք ոչ գի-
16 տէաք՝, Աստուած Իսրայէլի փրկիչ։ Ա-
մաչեսցեն եւ յամօթ լիցին [5]ամենայն
հակառակորդք նորա, եւ գնասցեն ա-
17 մօթով։ Նորոգեցարուք առ իս, կղզիք.
զի Իսրայէլ փրկեցաւ զփրկութիւն յա-
ւիտենից. մի՛ ամաչեսցեն՝ եւ մի՛ եւս
յամօթ լիցին՝ մինչեւ յաւիտեան։
18 Զի այսպէս ասէ Տէր որ արար զեր-
կինս, Աստուած՝ որ հաստատեաց զեր-
կիր եւ արար զնա, նա է որ սահմա-
նեաց զնա. եւ ի զուր ինչ ոչ արար
զնա, այլ ի բնակութիւն ստեղծ զնա.
19 Ես եմ Տէր եւ չիք այլ ոք։ Ոչ ի ծա-
ծուկ ինչ խօսեցայ՝ եւ ոչ ի տեղւոջ խա-
ւարին երկրի. չասացի ցզաւակն Յա-
կոբայ թէ [6]Ընդունայն խնդրեսջիք. ես եմ՝,
Ես եմ Տէր որ խօսիմ զարդարութիւն՝
20 եւ պատմեմ զճշմարտութիւն։ Ժողո-
վեցարուք եւ եկայք, խորհեցարուք ի
միասին, ապրեալքդ ի հեթանոսաց. ոչ
ծանեան որ բարձեալ բերէին [7]զփայտն
դրօշեալ՝. եւ կային յաղօթս առ աս-
21 տուածս որ ոչ փրկէին զնոսա։ [8]Եթէ
պատմեսցեն, ապա մերձեսցին զի գի-
տասցեն՝ ի միասին. ո՞ լսելի արար զայս
ամենայն ի սկզբանէ, եւ յայնմհետէ
պատմեցաւ ձեզ. [9]Ես եմ Աստուած՝ եւ
չիք այլ ոք բաց յինէն՝ արդար եւ փրկիչ,
22 եւ չիք ոք բաց յինէն։ [10]Դարձարուք առ
իս՝ եւ ապրեսջիք [11]որ եկեալդ էք ի ծա-
դաց երկրէ՝. Ես եմ Աստուած՝ եւ չիք
23 այլ ոք։ Յանձն իմ [12]երդնում, եթէ ար
ինչ ելանէ ի բերանոյ իմոյ՝ արդարու-
թիւն է, եւ բանք իմ մի՛ եղծցին՝. զի
ինձ կրկնեսցի ամենայն ծունր, եւ խոս-
տովան լիցի ամենայն [13]լեզու՝ Աստու-
24 ծոյ, Եւ ասասցէ՝ թէ Արդարութիւն եւ
փառք առ նա եկեսցեն. եւ ամաչես-
ցեն ամենեքեան՝ որ որոշեն զանձինս
25 իւրեանց ի Տեառնէ։ Արդարասցին՝ եւ
Աստուծով փառաւորեսցին ամենայն զա-
ւակ որդւոցն՝ Իսրայէլի։

## Գլ. ԽԶ

1 [14]Անկաւ Բէլ, խորտակեցաւ Դագոնն՝.
եղեն դրօշեալք նոցա ի գազանս եւ յա-
նասունս. [15]բարձէք զնոսա կապեալս իբ-
րեւ զբեռն աշխատելոյն եւ քաղցելոյն,
2 Լքելոյ եւ կարօտելոյ ի միասին, որք ոչ
կարացին ապրել ի պատերազմէ, եւ նո-
քա ի գերութեան վարեցան՝.
3 Լուարուք ինձ, տունդ Յակոբայ,
եւ ամենայն մնացեալքդ [16]Իսրայէլի,
բարձեալքդ յորովայնէ՝ եւ խրատեալք
ի մանկութենէ մինչեւ ցծերութիւն,
4 Թէ ես եմ, եւ մինչեւ կարի խոր ծե-
րասջիք՝ սակայն ես եմ. ես համբերեմ
ձեզ. ես արարի, եւ ես անուցից. ես
ընկալայց եւ ապրեցուցից զձեզ։
5 Ո՞ւմ նմանեցուցէք զիս. տեսէք հնա-
6 րեցարուք, մոլորեալքդ, Որ արկանէք՝
ոսկի հանգանակ ի քսակէ, եւ [17]կշռէք
զարծաթ ի կշիռս, եւ ի վարձու [18]ունիք
զոսկերիչս գործել կուռս ձեռագործս,
եւ խոնարհեալ երկիր [19]պագանէք նոցա։

---

[1] Եբր. Սաբայեցւոց, արք բարձրահասակք [2] Եբր. քեզ լիցին. [3] Եբր. ոտնակապօք անցցեն [4] Եբր. առ քեզ պաղատեսցին, Ի քեզ միայն գոյ Աստուած եւ ոչ այլ բաց յԱստուծոյ։
(15) Արդարեւ դու ես Աստուած որ թաքուցանես զքեզ [5] Եբր. ամենքին նորա. միանգամայն գնասցեն ամօթով ձեռագէտք դրօշելոց։ (17) Իսրայէլ փրկեցաւ Տերամբ զփրկութիւն յաւիտենից. մի՛ ամաչիցէք եւ մի՛ յամօթ լինիցիք [6] Եբր. Ի զուր խնդրեք զիս [7] Եբր. զփայտ դրօշելոյն իւրեանց [8] Եբր. Պատմեցէք եւ մերձեցուցէք, թող խորհուրդ առցեն [9] Եբր. ո՞չ ապաքէն ես Տէր, եւ ոչ այլ Աստուած բաց յինէն. Աստուած [10] Եբր. Հայեցարուք [11] Եբր. ամենայն ծագք երկրի

[12] Եբր. երդուայ. ելին ի բերանոյ իմմէ արդարութեան բանք, եւ մի՛ դարձցին յետս [13] Եբր. լեզու։ (24) Միայն Տերամբ ինձ, ասիցէ ոք, արդարութիւն եւ զօրութիւն. առ նա եկեսցէ իւրաքանչիւր, եւ ամաչեսցեն ամենեքին որ զայրանան նմա։ (25) Տերամբ արդարասցի եւ պարծեսցի ամենայն զաւակ [14] Եբր. Խոնարհեցաւ Բէլ, կործանեցաւ Նաբու [15] Եբր. բեռինք ձեր բարձեալք ծանունք են աշխատելոյն։ (2) Կործանան, խոնարհեցան միանգամայն, ոչ կարացին ազատել զբեռինս, եւ անձինք նոցա վարեցան ի գերութիւն։ [16] Եբր. տանդ Իսրայէլի, բարձեալքդ յարգանդէ եւ կրեալքդ յորովայնէ. (4) Եւ մինչեւ ի ծերութիւն ձեր ես նոյն եմ, և մինչեւ յալիս կրեցից զձեզ. ես արարի, և ես բարձից և ես կրեցից և ապրեցուցից։
(5) Ո՞ւմ նմանեցուցանէք զիս, և առնէք հաւասար, և համեմատէք զիս և նմանեցայց։ (6) Արկանեն [17] Եբր. կշռեն [18] Եբր. ունին [19] Եբր. պագանեն

7 Բարձեալ ¹կրէք ի վերայ ուսոց, եւ ե֊
թէ ²դնիցէք ի գետնի՝ անդէն ի տեղւոջ
մնայ, եւ ոչ շարժեսցի. եւ եթէ որ
կարդասցէ առ նա՝ ոչ լսէ, եւ ի չարեաց
ոչ փրկեսցէ զնա։
8 Յիշեցէք զայս եւ ³յոգւոց հանէք, ա֊
պաշխարեցէք, մոլորեալքդ, դարձարուք
9 սրտիւք, եւ՝ Յիշեցէք զառաջինն գործն
յաւիտենից. զի ես եմ Աստուած, եւ
10 չիք այլ ⁴ոք բաց յինէն՝. Որ պատմիցէ
յառաջագոյն զվերջինն ⁵մինչչեւ եղեալ
իցեն, եւ միանգամայն կատարեսցին՝.
եւ ասացի թէ Ամենայն խորհուրդք իմ
հաստատեսցին, եւ զամենայն զոր կա֊
11 միմ արարից, ⁶կոչել յարեւելից թռչուն՝,
եւ յերկրէ հեռաստանէ՝ ⁷վասն որոյ խոր֊
հեցայն, խօսեցայ եւ ածի, հաստատե֊
ցի եւ արարի. ածի զնա եւ յաջողեցի
12 զճանապարհս նորա։ Լուարուք ինձ,
կորուսեալքդ սրտիւք՝, հեռացեալքդ
13 յարդարութենէն. Մերձեցուցի զարդա֊
րութիւն իմ եւ այլ ոչ հեռասցի. եւ
⁸զճշմարտութիւն եւ զփրկութիւն իմ ոչ
յամեցուցից. ետու ի Սիոն զփրկութիւն
Իսրայելի ի փառաւորութիւն՝։

Գլ. ԽԷ

1 Էջ, նիստ յերկրի, օրիորդ դուստր Բա֊
բելացւոց. նիստ ի գետնի, զի չիք ա֊
թոռ. ⁹մուտ ի խաւար՝ դուստր Քաղ֊
դէացւոց. եւ ոչ եւս յաւելուցուս կո֊
2 չել դիրգ եւ փափուկ։ Առ երկան, ա֊
ղա ալեւր, ընկեա զքօղ քո, *քարշեա
զալիս՝ քո, բաց զսրունս քո, անց ընդ
3 գետս։ Յայտնեսցի ամօթ քո, եւ երե֊
ւեսցին նախատինք քո. ¹⁰զի յարձից ի
քէն զիրաւունս քո. ոչ եւս մատնես֊
4 ցէ զքեզ մարդկան։ Որ փրկեացն զքեզ՝
Տէր Սաբաովթ անուն է նորա՝ Սուրբն
5 Իսրայելի։ Նիստ թախծեալ՝ ⁹զղջացեալ.
մուտ ի խաւար, դուստր Քաղդէացւոց.
¹¹ոչ եւս կոչեսցիս զօրութիւն թագաւո֊
6 րաց՝։ Ես բարկացեալ էի ի վերայ ժո֊
ղովրդեան իմոյ, ¹²զի պղծեցին՝ զժա֊
ռանգութիւն իմ. ես մատնեցի զնոսա
ի ձեռս քո, եւ դու ոչ արարեր ի վե֊
րայ նոցա ողորմութիւն. ծանրացուցեր
7 զլուծ ծերոց յոյժ. Եւ ասացեր՝ Յաւի֊
տեան կացից իշխան. ոչ եդիր երբեք
զայս ի միտ քում, եւ ոչ յիշեցեր զվախ֊
8 ճան։ Եւ արդ լուր զայս, փափուկդ,
որ նստէիր յանձնապաստան, եւ ասէիր
ի սրտի քում թէ Ես եմ, եւ չիք ոք իմ
ընկեր. ոչ նստայց յայրութեան, եւ ոչ
9 ծանեայց ¹³զորբութիւն։ Եւ արդ հաս֊
ցեն յանկարծակի ի վերայ քո երկոքեան
սոքա ի միում աւուր, այրութիւն եւ
անզաւակութիւն. եկեսցէ ¹⁴յանկարծա֊
կի ի վերայ քո՝ վասն դիւթութեանցդ
քոց, եւ վասն զօրացեալ կախարդու֊
10 թեանցդ քոց, Եւ վասն վստահութեան
չարութեանց քոց, զի ասէիր՝ թէ ¹⁵Ես
եմ, եւ չիք ոք իմ ընկեր, զայս գի֊
տասջիր, զի առնուցուս զայդ ի միտ.
եւ պոռնկութիւնն քո յամօթ լիցի քեզ՝.
զի ասացեր ի սրտի քում, Ես եմ, եւ
11 չիք ոք իմ ընկեր։ Եւ հասցէ ի վերայ
քո ¹⁶կորուստ՝ զոր ոչ գիտիցես, եւ խոր֊
խորատ՝ եւ անկցիս ի նա՝. եւ եկեսցէ
ի վերայ քո թշուառութիւն, եւ ոչ կա֊
րասցես ¹⁷սուրբ լինել՝. եւ եկեսցէ ի վե֊
րայ քո յանկարծակի կորուստ, եւ ոչ
12 ծանիցես։ Աղէ կաց դու այժմ ի դիւ֊
թութիւնս քո, եւ ի բազում կախար֊
դութեան քում, ¹⁸զոր ուսար՝ ի ման֊
կութենէ քումմէ. եթէ կարասցե՞ս ինչ
օգտել, եթէ կարասցե՞ս կազդուրել.
13 ¹⁹Զի աշխատեցար ի խորհուրդս քո. յա֊
րիցեն եւ ապրեցուսցեն զքեզ աստե֊
ղագէտքն որ նշմարեն զաստեղս երկ֊
նից. պատմեսցեն քեզ զինչ գալոց է՝
14 ի վերայ քո։ Ահաւասիկ ամենեքին իբ֊
րեւ զխոտ ի հուր այրեսցին, եւ մի՛
ապրեցուսցեն զանձինս իւրեանց ի բո֊

¹Եբր. բերեն զնա ²Եբր. դնիցեն ³Եբր. մրացարուք. զմտաւ ածէք, յանցաւորք. ⁴Եբր. Աստուած, եւ ոչ իբրեւ զիս ⁵Եբր. եւ կանխաւ մինչեւ եղեալ իցեն ⁶Եբր. Որ կոչեմ յարեւելից թռչուն գիշատիչ ⁷Եբր. զայրն խորհրդոյ իմոյ. ապաքէն խօսեցայ եւ ածից. կազմեցի եւ արարից։(12)Լուարուք ինձ, խստասիրտք ⁸Եբր. փրկութիւն իմ ոչ յամեսցի. եւ տաց ի Սիոն փրկութիւն Իսրայելի որ փառք իմ է։ ⁹Յեբր. պակասէ *Եբր. վերացո զքղանցս ¹⁰Եբր. խնդրեցից վրէժ, և ոչ անսացից մարդոյ։(4) Փրկիչ մեր ¹¹Եբր. զի ոչ եւս յաւելուցուն կոչել զքեզ տիկին թագաւորութեանց

¹²Եբր. պղծեցի ¹³Եբր. անզաւակութիւն ¹⁴Եբր. բովանդակ ¹⁵Եբր. Չիք որ տեսանէ զիս։ Իմաստութիւն քո եւ գիտութիւն քո խոտորեցուցին զքեզ ¹⁶Եբր. չար զորոյ ոչ գիտիցես զծագումն ¹⁷Եբր. ցածուցանել զնա ¹⁸Եբր. յորս աշխատ եղեր ¹⁹Եբր. Տաղտկացար ի բազմութեան խորհրդոց քոց. յարիցեն և ապրեցուսցեն զքեզ որ բաժանեն զերկինս, նշմարեն զաստեղս, պատմեն զամսամտից, յորոց գալոցն են

ցոյ անտի. [1]զի նստիս ի վերայ կայծա-
կանց հրոյ, նոքա եղիցին քեզ յօգնա-
15 կանութիւն։ Վաստակ եղեն վաճառա-
կանք քո ի վաճառս քո ի մանկութենէ
իւրեանց, այր ըստ անձնէ մոլորեցան,
եւ քեզ ոչ եղիցի փրկութիւն։՚՚

## Գլ. ԽԸ

1 Լուարուք զայս, տունդ Յակոբայ,
անուանեալքդ յանուն Իսրայէլի, ծնեալքդ
ի զաւակէ Յուդայ, որ երդնուք յանուն
Տեառն [2]Աստուծոյ Իսրայէլի, որ՚՚ յիշա-
տակէքդ ոչ ճշմարտութեամբ եւ ոչ ար-
2 դարութեամբ։ [3]Որ խրախուսէք յանուն
քաղաքին սրբոյ, եւ հաստատեալ հա-
մարիք յանուն Աստուծոյ Իսրայէլի՚՚, Տէր
3 Սաբաւովթ անուն է նորա։ Զառաջինսն
տակաւին պատմեմ, [4]եւ ի բերանոյ իմ-
մէ, եւ լսելի [5]եղեւ. յանկարծակի ա-
4 րարի՝ եւ եկն եհաս։ Գիտեմ զի խիստ
ես, եւ ջիղք երկաթիք պարանոց քո,
5 եւ ճակատ քո պղնձի։ [6]Պատմեցաւ քեզ
առաջինն՚՚, եւ մինչչեւ հասեալ էր առ
քեզ՝ լսելի արարի քեզ. մի՛ երբեք ա-
սիցես թէ Կուռքն իմ արարին, եւ մի՛
ասիցես թէ Դրօշեալքն եւ ձուլածոյքն
6 [7]պատմեցին ինձ։ Լուարուք զամենայն
եւ ոչ առէք ի միտ, այլ եւ՚՚ լսելի ա-
րարի քեզ զնորն՝ որ յայսմհետէ լինե-
7 լոց է. [8]Եւ ոչ ասասցես թէ Այժմ լինի,
եւ ոչ ի վաղուց հետէ յաւուրցն առաջ-
նոց՚՚, եւ ոչ եղեր ունկնդիր այնմիկ.
8 մի՛ ասիցես, թէ Այո, գիտեմ զայդ. Զի
ոչ [9]գիտես եւ ոչ իմանաս, եւ ոչ ի
սկզբանէ բացեր զականջս քո. զի գի-
տացի թէ [10]արհամարհելով արհամար-
հեսցես՚՚, եւ անօրէն անդստին յորո-
9 վայնէ [11]կոչեսցիս։ Վասն անուան իմոյ
[12]ցուցից քեզ զբարկութիւն իմ եւ [13]զփա-
ռաւորութիւնս իմ, զոր ածի ի վերայ
10 քո զի մի՛ սատակեցից զքեզ։ Ահաւա-
սիկ վաճառեցի զքեզ ոչ վասն արծա-
թոյ, եւ զերծուցի զքեզ ի հնոցէ աղ-
11 քատութեան։ Վասն իմ արարի քեզ
զայդ՚՚, զի մի՛ անուն իմ հայհոյեսցի.
12 եւ զփառս իմ այլում ոչ տաց։ Լուր
ինձ, Յակոբ, եւ Իսրայէլ՝ զոր ես
կոչեմ[14]. ես եմ առաջին, եւ ես եմ յա-
13 ւիտեան։ Ձեռն իմ արկ հիմունս երկ-
րի, եւ աջ իմ [15]հաստատեաց զերկինս.
կոչեցից զամենեսեան զնոսա, եւ կաց-
14 ցեն ի միասին։ [16]Ժողովեսցին ամենե-
քեան եւ լուիցեն՝ թէ ո՛ պատմեաց նո-
ցա զայն։ Առ սէր քո արարի զկամս
քո ի վերայ Բաբելոնի, բառնալ զզա-
15 ւակն Քաղդէացւոց. Ես կոչեցի եւ ես
խօսեցայ. ածի զնա՝ եւ յաջողեցի զճա-
16 նապարհս նորա՚՚ Մատերուք առ իս, եւ
լուարուք զայս. ոչ ի սկզբանէ ի ծա-
ծուկ ինչ խօսեցայ, [17]եւ ոչ ի տեղւոջ
խաւարին երկրի.՚՚ յորժամ լինէրն իսկ՝
ես անդ էի. եւ արդ Տէր [18]Տէր առա-
17 քեաց զիս եւ Հոգի նորա։ Այսպէս ա-
սէ Տէր որ փրկեացն զքեզ՝ Սուրբն Իս-
րայէլի. Ես եմ Տէր Աստուած քո,
[19]յուցի քեզ գտանել ճանապարհ՚՚ ընդ որ
18 գնասցես։ Եւ եթէ լուեալ էր քո պա-
տուիրանաց իմոց՝ լինէր քեզ իբրեւ գետ
խաղաղութիւն քո, եւ արդարութիւն
19 քո իբրեւ զալիս ծովու։ Եւ լինէր իբ-
րեւ զաւազ զաւակ քո, եւ ծնունդք
որովայնի քո իբրեւ զհող երկրի. [20]սա-
կայն եւ արդ ոչ սատակեսցիս, եւ ոչ
20 կորիցէ անուն քո՚՚ առաջի իմ։ Ելէք ի
Բաբելոնէ, փախերուք ի Քաղդէաց-
ւոց. ի ձայն ուրախութեան պատմեցէք,
եւ լսելի [21]եղիցի. պատմեցէք մինչեւ ի
ծագս երկրի՝ զոր առէքդ՝ թէ Փրկեաց

---

[1] Եբր. չիք կայծ ի ջեռուցանել զանձն, կրակ՝ առ ի նստել առաջի նորա։ (15) Այսպէս եղիցին քեզ ընդ որս աշխատ եղեր. վաճառականք քո ի մանկութենէ քումմէ. իւրաքանչիւր ի գնացս իւր մոլորեցաւ, չիք որ փրկէ զքեզ։ [2] Եբր. եւ յԱստուած Իսրայէլի [3] Եբր. Զի ի քաղաքէն սրբութեան կոչեցան, եւ յԱստուած Իսրայէլի յեցեալ են [4] Եբր. եւ ելին [5] Եբր. արարի զնոսա. [6] Եբր. Պատմեցի քեզ ի վաղուց [7] Եբր. պատուիրեցին ինձ։ (6) Լուար, տես զայս ամենայն. եւ դուք միթէ ո՞չ պատմիցէք. [8] Եբր. եւ զծածուկն, զոր ոչ գիտացեր։ (7) Այժմ ստեղծան եւ ոչ ի վաղուց, եւ յառաջ քան զօրն [9] Եբր. լուար [10] Եբր. դրժելով դրժես [11] Եբր. կոչեցար [12] Եբր. յերկարեցից [13] Եբր. վասն փառաց իմոց համ-
բերեցից քեզ, առ ի չսատակելոյ զքեզ։ (10) Ահաւասիկ զտեցի զքեզ ոչ իբրեւ զարծաթ, և փորձեցի զքեզ ի հնոցի նեղութեան։ (11) Վասն իմ, վասն իմ արարի [14] Եբր.—յետ՝ յաւելու—, ես նոյն եմ [15] Եբր. ձգեաց [16] Եբր. Ժողովեցարուք ամենեքին դուք, եւ լուարուք. ո՞ ի նոցանէ պատմեաց զայսոսիկ. զոր Տէր սիրեաց արասցէ զկամս նորա ի Բաբելոն, և բազուկ նորա ի վերայ Քաղդէացւոցն։ (15) Ես, ես խօսեցայ. կոչեցի եւս զնա. ածի զնա, եւ յաջողեցաւ ճանապարհ նորա։ [17] Եբր. [illegible] [18] Եբր. Եհովայ [19] Եբր. որ ուսուցանէ քեզ օգտել. առաջնորդէ քեզ ի ճանապարհին [20] Եբր. ոչ հատանէր եւ ոչ կորնչէր անուն նորա [21] Եբր. արարէք զայս

21 Տէր զծառայ իւր զՅակոբ։ [1]Եւ եթէ
ծարաւեսցեն յանապատին, հանցէ նոցա
ջուր ի վիմէ. վէմ պատառեսցի, ջուրք
բղխեսցեն, եւ արբցէ ժողովուրդ իմ։
22 Ոչ գոյ խաղաղութիւն ամպարշտաց,
ասէ Տէր։

Գլ. ԽԹ

1 Լուարուք ինձ, կղզիք, եւ ունկն դիք
[2]հեթանոսք. յետ բազում ժամանակաց
հաստատեսցի այդ, ասէ Տէր։ Յար-
գանդէ կոչեաց զիս, եւ յորովայնէ մօր
2 իմոյ կարդաց զանուն իմ. Եդ զբերան
իմ իբրեւ զսուսեր սուր. եւ ընդ հո-
վանեաւ ձեռին իւրոյ թաքոյց զիս. եւ
եդ զիս իբրեւ զնետ մի ընտիր, եւ ի
3 կապարճս իւր թաքոյց զիս. Եւ ասէ
ցիս, Ծառայ իմ ես դու, Իսրայէլ, եւ ի
4 քեզ փառաւորեցայց։ Եւ ասեմ, Զուր
ունայն վաստակեցի տարապարտուց,
յոչինչ ետու զզօրութիւն իմ. վասն
այսորիկ իրաւունք իմ ի Տեառնէ, եւ
վաստակ իմ առաջի Աստուծոյ իմոյ։
5 Եւ արդ այսպէս ասէ Տէր որ ստեղծ
զիս յորովայնէ ծառայ իւր, [3]ժողովել
զՅակոբ եւ զԻսրայէլ առ ինքն. եւ
ժողովեցայց եւ փառաւորեցայց առաջի
Տեառն, եւ Աստուած իմ է ինձ զօրու-
6 թիւն։ Եւ ասէ ցիս, [4]Մեծ է քեզ այդ,
կոչել զքեզ ծառայ իմ, հաստատել
զազգս Յակոբայ, եւ զցրուեալսն Իս-
րայէլի դարձուցանել. [5]աւասիկ եդի
զքեզ յուխտ ազգի եւ ի լոյս հեթա-
նոսաց, լինել փրկութիւն[6] մինչեւ ի
ծագս երկրի։
7 Այսպէս ասէ Տէր [7]որ փրկեացն զքեզ
Աստուած Իսրայէլի. Սրբեցէք զայն որ
խոտէն զանձն իւր, զգարշելին յազ-
գաց ի ծառայիցն իշխանաց. թագա-
ւորք տեսցեն զնա եւ յարն կացցեն.
իշխանք՝ եւ երկիր պագցեն նմա վասն
Տեառն. զի հաւատարիմ է Սուրբն Իս-
8 րայէլի՝ եւ որ ընտրեաց զքեզ։ Այսպէս
ասէ Տէր [8]ցԻսրայէլ. Ի ժամանակի ըն-
դունելութեան լուայ քեզ, եւ յաւուր
փրկութեան օգնեցի քեզ. եւ [9]ստեղծի
զքեզ, եւ ետու զքեզ յուխտ հեթա-
նոսաց՝ հաստատել զերկիր, եւ ժառան-
գեցուցանել զժառանգութիւնս աւե-
9 րակս. Ասել կապելոց՝ թէ Ելէք, եւ որ
ի խաւարին իցեն՝ թէ Յայտնեցարուք։
Յամենայն ճանապարհս արածեսցին, եւ
10 յամենայն շաւիղս ճարակք նոցա։ Ոչ
քաղցիցեն եւ ոչ ծարաւեսցեն, եւ ոչ
խորշակահար լիցին յարեւու. այլ որ
ողորմելոցն է [10]մխիթարեսցէ զնոսա, եւ
11 ընդ աղբերակունս ածցէ զնոսա։ Եւ
եդից զամենայն լերինս ի ճանապարհ,
եւ [11]զամենայն շաւիղս յարօտ նոցին։
12 Ահաւասիկ սոքա եկեսցեն ի հեռաս-
տանէ, սոքա ի հիւսիսոյ եւ ի ծովէ,
13 եւ սոքա յերկրէ [12]Պարսից։ Ուրախ
լերուք, երկինք, եւ ցնծասցէ երկիր, գո-
չեսցեն լերինք զցնծութիւն [8]եւ բլուրք
զարդարութիւն. զի ողորմեցաւ [13]Աս-
տուած ժողովրդեան իւրում, եւ զխո-
նարհս ժողովրդեան իւրոյ մխիթարեաց։
14 Բայց Սիոն ասաց. Եթող զիս [14]Տէր
15 եւ մոռացաւ զիս [13]Աստուած։ Միթէ
մոռանայցէ՞ կին [15]զմանուկ իւր, կամ
թէ ո՞չ գթասցի ի ծնունդս որովայնի
իւրոյ. եւ եթէ մոռանայցէ զայն կին՝
սակայն ես ոչ մոռացայց զքեզ, ասէ
16 Տէր։ Ահաւասիկ ի վերայ ձեռաց իմոց
նկարեցի [16]զպարիսպ քո, եւ առաջի իմ
17 ես դու յամենայն ժամ. Եւ արագ շի-
նեսջիր յայնցանէ՝ որ քակեցին զքեզ,
եւ որ աւերեցինն զքեզ՝ ի քէն ի բաց
18 մերժեսցին։ Ամբարձ շուրջ զքեւ զաչս
քո, եւ [17]տես զամենեսին, զի ահաւա-
սիկ՝ ժողովեցան եւ եկին առ քեզ.
Կենդանի եմ ես՝ ասէ Տէր, զի զամե-
նեսին զնոսա իբրեւ զպատմուճան զգեց-
ցիս, եւ արկցես զնոսա զքեւ իբրեւ
19 զզարդ հարսին։ Զի [18]աւերակքն եւ ա-
պականեալքն եւ կործանեալքն քո՝ արդ
նեղեսցին ի բնակչացն իւրեանց՝, եւ

[1] Եբր. Եւ ոչ ծարաւեցան, յորժամ ընդ անապատս շրջեցոյց զնոսա, ջուրս ի վիմէ բղխեցոյց նոցա, եւ պատառեաց զվէմն եւ հոսեցին ջուրք։ [2] Եբր. հեթանոսք ի հեռաստանէ. Տէր յորգանդէ [3] Եբր. դարձուցանել զՅակոբ առ ինքն, եւ Իսրայէլ ժողովեսցի առ նա, եւ ես [4] Եբր. Դոյզն է լինել քեզ ինձ ծառայ [5] Եբր. եւ եդի զքեզ [6] Եբրայեցին յաւէլու, իմ [7] Եբր. Փրկիչն Իսրայէլի, Սուրբն նորա առ որ խոտեալն է անձամբ, որ ատելին է ազգաց, որ ծառայն է

[8] Յեբր. պակասէ [9] Եբր. պահեցի զքեզ եւ ետու զքեզ յուխտ ժողովրդեան [10] Եբր. տարցի [11] Եբր. պողոտայք իմ բարձրասցին [12] Եբր. Սինիմ [13] Եբր. Տէր [14] Եբր. Եհովայ [15] Եբր. զստնդիաց [16] Եբր. զքեզ, պարիսպք քո առաջի իմ յամենայն ժամ։ (17) Փութասցին որդիք (կամ, շինիչք) քո [17] Եբր. տես ամենեքին նոքա [18] Եբր. աւերակք քո, եւ ամայութիւն քո, եւ երկիր կործանման քո եղիցին անձուկ ի բնակչաց

հեռասցին ի քէն որ կլանէինն զքեզ։
20 Զի ասասցեն յականջս քո [1]որդիքն քո
զորս կորուսեր", Նեղ է ինձ տեղիս,
21 ընդարձակեա ինձ զի բնակեցայց։ Եւ
ասասցես ի սրտի քում, Ո՞ ծնաւ ինձ
զսոսա․ զի ես անզաւակ եւ [2]այրի էի,
տնանկ եւ տարագրեալ․ եւ զսոսա
ինձ ո՞ սնոյց, զի ես միայն մնացեալ
էի, եւ սոքա ո՞ւր էին։
22 Այսպէս ասէ Տէր [3]Տէր․ Ահաւասիկ
ամբարձից զձեռս իմ ի վերայ ազգաց,
եւ [4]ի կղզիս կանգնեցից զնշան իմ. եւ
ածցեն զորդիս քո ի ծոցս իւրեանց, եւ
զդստերս քո ի վերայ ուսոց իւրեանց
23 բարձեալ բերիցեն։ Եւ եղիցին թագա-
ւորք դայեակք քո, եւ կանայք նոցա
մանկաբարձք քո․ ի վերայ երեսաց երկրի
երկիր պագանիցեն քեզ, եւ զհող ոտից
քոց լիզիցեն․ եւ ծանիցես թէ ես եմ
Տէր․ եւ ոչ ամաչեսցեն որք սպասեն
24 ինձ։ Միթէ հանիցէ՞ ոք զկողոպուտ
սկայի, կամ [5]վարիցէ՞ ոք աշխատաւոր-
25 տուց զգերի՞ եւ ապրիցի՞։ Այսպէս ասէ
Տէր․ Եթէ ոք վարիցէ զսկայ գերի,
առցէ զաւար նորա․ եւ քաջ առնէ՝ որ
առնուցու զաւար սկայի։ Այլ ես զդա-
տաստան քո դատեցայց, եւ զորդիս քո
26 փրկեցից։ Եւ կերիցեն նեղիչք քո"
զմարմինս իւրեանց․ եւ արբցեն իբրեւ
զգինի նոր զարիւնս իւրեանց՝ եւ ար-
բեսցին․ եւ ծանիցէ ամենայն մարմին
եթէ ես եմ Տէր որ փրկեցի զքեզ, եւ
[6]օգնեցի քեզ եւ զօրացուցի զՅակոբ"։

ԳԼ. Ծ

1 Այսպէս ասէ Տէր․ Ո՞ւր է թուղթն
ապահարզանի որով արձակեցի զմայրն
ձեր․ կամ [7]ո՞ւր է զրուտական վաճառա-
կանացն, որով" վաճառեցի զձեզ․ այլ
ի մեղս ձեր վաճառեցայք, եւ վասն ա-
նօրէնութեանց ձերոց արձակեցի զմայրն
2 ձեր։ [8]Զի եկի, եւ ոչ գոյր մարդ․ կո-
չեցի, եւ ոչ ոք էր որ [9]լսէր․ միթէ ո՞չ
կարէ փրկել ձեռն իմ", կամ ո՞չ զօրեմ
ապրեցուցանել․ ահա կշտամբութեամբ
իմով [10]ցամաքեցից զծով, եւ զգետս ապա-
կանեցից․ եւ ցամաքեսցին" ձկունք
նոցա ի ջուրցն պակասութենէ, եւ մեռ-
3 ցին ի ծարաւոյ։ Զգեցուցից զերկինս
խաւար, եւ իբրեւ զքուրձ արարից
4 զհանդերձ նոցա։ Տէր [11]Տէր տայ" ինձ
լեզու խրատու, զի գիտացից խօսել ի
ժամու [12]զբանն․ պատրաստեաց զիս ընդ
առաւօտս․ յաւել ինձ ունկն ի լսել․
5 Եւ խրատ Տեառն բանայ զականջս իմ,
եւ ես ոչ խստանամ եւ ոչ ընդդէմ դառ-
6 նամ։ Զթիկունս իմ ետու ի հարուածս,
եւ զծնօտս իմ յապտակս, եւ զերեսս
իմ ոչ դարձուցի յամօթոյ ընդ երեսս
7 թքանելոյ։ Եւ Տէր Տէր" եղեւ իմ օգ-
նական․ վասն այնորիկ ոչ ամաչեցի,
այլ արարի զդէմս իմ իբրեւ զվէմ հաս-
տատուն․ եւ գիտացի թէ ոչ ամաչե-
8 ցից․ [13]Զի մերձ է որ արդարացուցանէ
զիս․ ո՞վ է ոսոխն իմ, [14]եկեսցէ եւ
կացցէ ի մէջ․ եւ ո՞վ է որ դատին զիս",
9 մերձեսցի առ իս։ Զի ահաւասիկ Տէր
[3]Տէր օգնական է ինձ, ո՞վ է որ [15]չար-
չարիցէ զիս։ Ահաւասիկ դուք ամե-
նեքեան իբրեւ զձորձս հնասջիք", եւ
ցեց մեցամէջս կերիցէ [16]զձեզ։
10 Ո՞վ իցէ ի ձէնջ որ երկնչի ի Տեառնէ,
լուիցէ զձայն ծառայի նորա․ որ [17]գնայցեն
ընդ խաւար՝ եւ ոչ գոյր նոցա լոյս, յու-
սացեալք յանուն Տեառն եւ խրախուսա-
11 եալք յԱստուած"։ Ահաւասիկ դուք ա-
մենեքեան [18]հուր վառեալ՝ պատեսջիք
իբրեւ ի բոցոյ", գնասջիք ի լոյս հրոյ

[1] Եբր. որդիք անզաւակութեան քո [2] Եբր. ամուլ [3] Եբր. Եհովայ [4] Եբր. ի ժողովուրդս [5] Եբր. գերութիւն հզօրին թափեսցի՞։ (25) Զի այսպէս ասէ Տէր․ Նա եւ գերութիւն սկային հանցի, եւ աւար բռնաւորին թափեսցի․ եւ ընդ որում կռուին ընդ քեզ՝ ես կռուեցայց, եւ զորդիս քո ես փրկեցից։ (26) Եւ տաց ուտել աւերչաց քոց [6] Եբր. Փրկիչ քո՝ հզօրն Յակոբայ [7] Եբր. ո՞վ այն ի փոխատուաց իմոց որում [8] Եբր. Ընդէ՞ր

[9] Եբր. տայր պատասխանի․ միթէ կարճելով կարճեցա՞ւ ձեռն իմ ի փրկելոյ [10] Եբր. ցամաքեցուցից զծով, եւ եդից զգետս յանապատ, եւ նեխեսցին [11] Եբր. Եհովայ ես [12] Եբր. զբանն առ վաստակեալն․ զարթուցանէ զիս այգուն այգուն, զարթուցանէ ինձ ունկն ի լսել իբրեւ ուսանելեաց։ (5) Տէր Եհովայ եբաց զունկն իմ, եւ ես չեղէ ապստամբ եւ ոչ դարձայ յետս։ (6) Զթիկունս իմ ետու հարկանելեաց․ եւ զծնօտս իմ որոց փետէին, եւ զերեսս իմ ոչ թաքուցի ի նախատանաց եւ ի թքոյ։ (7) Եւ Տէր Եհովայ [13] Եբր. դ–ի–ն [14] Եբր. կացցուք ի միասին․ ո՞վ է դատախազն իմ [15] Եբր. առնիցէ զիս պարտաւոր։ Ահաւասիկ նոքա ամենեքեան իբրեւ զձորձս հնասցին [16] Եբր. ցեցն [17] Եբր. գնայ ընդ խաւար եւ ոչ գոյ նորա լոյս․ յուսասցի յանուն Տեառն․ եւ խրախուսեսցի յԱստուած իւր [18] Եբր. որ վառէք հուր․ պատէք զձեզ կայծակամբք

ձերոյ, եւ [1]բորբոքեսջիք բոցով. վասն
իմ" եղեւ ձեզ այդ, ի տրտմութեան
ննջեսջիք:

## ԳԼ. ԾԱ

1 Լուարուք ինձ որ զհետ երթայք իրա-
ւանց, [2]եւ խնդրեցէք զՏէր. հայեցարուք
ի վէմն հաստատուն" յորմէ կոփեցա-
րուք, եւ ի գուբ հորոյն յորմէ փո-
2 րեցարուք: Նայեցարուք յԱբրահամ
հայրն ձեր, եւ ի Սառա որ երկնեաց
զձեզ. զի մի էր՝ եւ կոչեցի զնա, եւ
օրհնեցի զնա, եւ բազմացուցի զնա:
3 [3]Եւ արդ մխիթարեցից զքեզ, Սիոն,
եւ մխիթարեցից զամենայն զաւերակս
նորա. եւ արարից զամենայն աւերակս
նորա իբրեւ զդրախտ, եւ զկողմն
արեւմտից" իբրեւ զդրախտ Տեառն. ու-
րախութիւն եւ ցնծութիւն գտցեն ի նմա,
խոստովանութիւն եւ ձայն օրհնութեան:
4 [4]Լուարուք ինձ՝ լուարուք ինձ, ժողո-
վուրդ, եւ թագաւորք", ունկնդիր լերուք
ինձ. զի օրէնք յինէն ելցեն, եւ [5]դա-
5 տաստան իմ ի լոյս հեթանոսաց: Արագ
արագ մերձեսցի արդարութիւն իմ, եւ
ելցէ իբրեւ զլոյս փրկութիւն իմ. ի բա-
զուկ իմ հեթանոսք յուսասցին". ինձ
կղզիք սպասեսցեն, եւ ի բազուկ
6 իմ յուսասցին: Ամբարձէք յերկինս զաչս
ձեր, եւ հայեցարուք յերկիր ի խոնարհ.
զի երկինք իբրեւ զծուխ [6]հաստատեալ
են", եւ երկիր իբրեւ զձորձս մաշեսցի,
եւ բնակիչք նորա իբրեւ զնոյնս կորի-
ցեն. այլ փրկութիւն իմ յաւիտեան
կացցէ, եւ արդարութիւն իմ մի՛ պա-
կասեսցէ:
7 Լուարուք ինձ որ գիտէք զիրաւունս,
ժողովուրդ իմ՝ որոց օրէնք իմ ի սիրտս
ձեր, մի՛ երկնչիք ի նախատանաց մարդ-
կան, եւ բամբասանք նոցա զձեզ յա-
8 մօթ մի՛ արասցեն. Զի իբրեւ [7]ձորձք
ընդ ժամանակաւ մաշեսցին", եւ իբրեւ
զասր որ ուտիցի ի ցեցոյ. բայց արդա-
րութիւն իմ յաւիտեան կացցէ, եւ փր-
կութիւն իմ ազգաց յազգս:
9 Զարթիր, զարթիր, [8]Երուսաղէմ, եւ
զգեցիր զզօրութիւն բազկի քո". զար-
թիր իբրեւ յաւուրցն ի սկզբանէ, իբ-
րեւ յազգացն յաւիտենից. ո՞չ դու այն
ես որ [9]տաշեցեր զլայնութիւնն, վանե-
10 ցեր" զվիշապն. Ո՞չ դու այն ես որ
[10]աւերեցեր զծովն՝ զբազմութիւն ջուրցն
անդնդոց, որ արարեր զխորս ծովուն
ճանապարհ անցից փրկելոցն եւ ապրե-
11 լոց: [11]Զի ի Տեառնէ եղիցի դարձ", եւ
եկեսցեն ի Սիոն ցնծութեամբ եւ [12]ու-
րախութեամբ յաւիտենից. զի ի վերայ
գլխոց նոցա օրհնութիւն", եւ ուրա-
խութիւն հասցէ նոցա. մերժեցան ցաւք
եւ տրտմութիւնք եւ հեծութիւնք:
12 Ես եմ, ես եմ [13]նոյն որ մխիթարեցի
զքեզ. ծանիր զինչ ազ էիր, եւ երկեար" ի
մահկանացու մարդոյ եւ յորդւոյ մարդոյ
13 [14]որ իբրեւ զխոտ ցամաքեցան": Եւ մո-
ռացար [15]զԱստուած զԱրարիչ քո, որ
արար զերկինս եւ հաստատեաց զեր-
կիր. եւ երկնչէիր միշտ զամենայն ա-
ւուրս յերեսաց սրտմտութեան նեղչին
քո որպէս խորհեցաւ ջնջել զքեզ. եւ
արդ ո՞ւր է սրտմտութիւն նեղչին քո:
14 [16]Զի ի փրկութեանն քում ոչ կարասցէ
կալ. եւ ոչ յամեսցէ, եւ ոչ սպանցէ
զքեզ յապականութիւն, եւ ոչ պակա-
15 սեսցէ հացն քո: Ես" եմ Տէր Աստուած
քո՝ որ [17]խռովեմ զծով, եւ զոչեցուցա-
նեմ զալիս" նորա. Տէր Սաբաւովթ ա-
16 նուն է իմ: Եդից զբանս իմ ի բերանս
քո, եւ ընդ հովանեաւ ձեռին իմոյ
ծածկեցից զքեզ, որով կանգնեցի զեր-
կինս եւ արկի զհիմունս երկրի, եւ ա-
սացի ցՍիոն, ժողովուրդ իմ ես դու:
17 Զարթիր, զարթիր, արի կաց,
Երուսաղէմ, որ արբեր ի ձեռանէ
Տեառն զբաժակն բարկութեան նորա.

---

[1]Եբր. ի կայծակունս զորս բորբոքեցէք. ի ձեռանէ իմմէ [2]Եբր. որ խնդրէք զՏէր, հայեցարուք ի վէմն [3]Եբր. Զի մխիթարեաց Տէր զՍիոն, մխիթարեաց զամենայն աւերակս նորա, եւ արար զանապատ նորա իբրեւ զԵդեմ, եւ զամայութիւն նորա [4]Եբր. Միտ դիք ինձ, ժողովուրդ իմ, և ազգ իմ [5]Եբր. զիրաւունս իմ ի լոյս ժողովրդոց հանգուցից: (5) Մերձ է արդարութիւն իմ, ել փրկութիւն իմ, եւ բազուկք իմ զժողովուրդս դատեսցին [6]Եբր. անցցեն [7]Եբր. զձորձ կերիցէ զնոսա ուտիճ

[8]Եբր. զգեցիր զզօրութիւն, բազուկ Տեառն [9]Եբր. ջախջախեցեր զամբարտաւանն (Ռահաբ), վիրաւորեցեր [10]Կամ, ցամաքեցուցեր [11]Եբր. Եւ ապրեալքն Տեառն դարձցին [12]Եբր. ուրախութիւն յաւիտենից ի վերայ գլխոց նոցա. խնդութիւն [13]Եբր. որ մխիթարեմ զձեզ: ո՞վ ես դու որ երկնչիս [14]Եբր. համարեալ խոտ [15]Եբր. զՏէր [16]Եբր. Փութասցի կապեալն յարձակուրդ, եւ մի՛ մեռցի ի գբի, եւ ոչ պակասեսցի հաց նորա: (15) Զի ես [17]Կամ, սաստեմ ծովու, յորժամ գոռան ալիք

[1]զբաժակն կործանման, զբաժակն սրտ-
մտութեան, զոր արբեր եւ թափեցեր՝։
18 Եւ ոչ ոք էր որ [2]մխիթարէր զքեզ՝ յա-
մենայն որդւոցն քոց զոր ծնար, եւ ոչ
ոք էր որ ձեռնտու լինէր քեզ յամե-
նայն որդւոցն քոց զորս բարձրացուցեր։
19 Երկու ինչ [3]հակառակ կան՝ քեզ, եւ
ո՞վ է որ տրտմակից լինիցի քեզ. կոր-
ծանումն եւ բեկումն, սով եւ սուր.
20 [4]եւ ո՞ է որ մխիթարիցէ՝ զքեզ։ Որդիքն
քո տարակուսեալք՝ որ ննջեն ի կլիցս
ամենայն ճանապարհաց, իբրեւ [5]զճակն-
դեղ կիսեփեաց՝, լիք են ի բարկութենէ
Տեառն, [6]լուծեալք ի Տեառնէ Ա-
21 ստուծոյ՝։ Վասն այնորիկ լուր, տառապ-
եալդ՝ որ արբեալդ ես եւ ոչ ի գինւոյ.
22 Այսպէս ասէ [7]Տէր Աստուած որ դատի
զժողովուրդ իւր՝. Ահաւադիկ ի բաց ա-
ռարի ի ձեռանէ քումմէ զբաժակն [8]կոր-
ծանման, զբաժակն՝ սրտմտութեան ի-
մոյ, եւ ոչ եւս յաւելցես ըմպել զնա։
23 Եւ տաց զնա ի ձեռս [9]վնասակարացն
քոց, եւ ի ձեռս՝ այնոցիկ որ տառապե-
ցուցին զքեզ. որք ասէին ցանձն քո,
Խոնարհեաց, թող անցցուք. եւ [10]եդին
հաւասար երկրի զմէջ քո, [11]արտաքոյ
անցաւորաց քոց՝։

## ԳԼ. ԾԲ

1 Զարթիր, զարթիր, [9]Սիոն, զգեցիր
զզօրութիւն քո, Սիոն, [12]եւ դու զգե-
ցիր զփառս քո՝, Երուսաղէմ՝ քաղաքդ
սուրբ. զի ոչ եւս յաւելցեն անցանել
2 ընդ քեզ պիղծք եւ անթլփատք։ Թօթա-
փեա զփոշիդ, յառն կաց եւ նիստ, Երու-
սաղէմ. լոյծ զկապ պարանոցի քո,
3 գերիդ՝ դուստր Սիոնի։ Զի այսպէս
ասէ Տէր. Զրի վաճառեցայք, եւ ոչ
4 արծաթով փրկեսջիք։ Այսպէս ասէ [13]Տէր.
Յերկիրն Եգիպտացւոց էջ ժողովուրդ
իմ զառաջինն՝ բնակել անդ նժդեհու-
թեամբ, եւ [14]յԱսորեստան բռնութեամբ
վարեցան, եւ արդ ընդէ՞ր էք աստ։
5 Այսպէս՝ ասէ Տէր. զի վարեցաւ ժո-
ղովուրդն իմ ձրի, [15]զարմացեալ էին
եւ լային։ Այսպէս ասէ Տէր. Վասն ձեր
անուն իմ հանապազ հայհոյի ի մէջ հե-
6 թանոսաց՝։ Վասն այնորիկ ծանիցէ ժո-
ղովուրդ իմ զանուն իմ յաւուր յայն-
միկ, թէ ես նոյն եմ որ խօսէի, [16]եւ
արդ եկի հասի՝։
7 Իբրեւ զի՛ գեղեցիկ են ի վերայ լե-
րանց ոտք աւետարանչի [17]համբաւուն
խաղաղութեան, իբրեւ աւետարանչի
բարութեանց. զի լսելի արարից զփըր-
կութիւն քո, ասել ցՍիոն թէ Թագա-
8 ւորեսցէ քեզ Աստուած։ Զի ձայն պա-
հապանաց քոց բարձրացաւ, եւ ի նոյն
բարբառ առ հասարակ ցնծասցեն. զի
դէմ յանդիման տեսցեն զժամանակ յո-
9 րում ողորմեսցի Տէր Սիոնի։ Լերինք
գոչեսցեն աւերակօքն հանդերձ Երու-
սաղեմի զցնծութիւն, զի ողորմեցաւ
նմա Տէր, եւ փրկեաց զԵրուսաղէմ։
10 Եւ յայտնի արասցէ՝ Տէր զբազուկ իւր
սուրբ առաջի ամենայն ազգաց, եւ
տեսցեն ամենայն ծագք երկրի զփրկու-
թիւն Աստուծոյ մերոյ։
11 Ի բաց կացէք, ի բաց կացէք. ելէք
այտի, եւ ի պիղծս մի՛ մերձենայք. ելէք
ի միջոյ նորա, եւ [18]մեկնեցարուք, որ
12 բարձեալ բերէք զսպաս Տեառն։ Զի ոչ
[19]խռովութեամբ ելջիք, եւ ոչ փա-
խըստեամբ գնասջիք. զի առաջի ձեր Տէր
ինքնին գնասցէ. եւ որ ժողովէն զձեզ՝
Աստուած Իսրայելի։
13 Ահաւադիկ [20]ի միտ առցէ մանուկ իմ՝.
վերասցի եւ բարձրասցի եւ փառաւո-
14 րեսցի յոյժ։ Զոր օրինակ [21]զարմասցին
բազումք ի վերայ քո, (այնպէս անշքեսցի

---

[1]Եբր. զմրուր բաժակին թմրութեան արբեր եւ քամեցեր [2]Եբր. առաջնորդէր քեզ [3]Եբր. դիպեցան [4]Եբր. ի՞ւ մխիթարեցից [5]Եբր. զլամբր յորդայթի [6]Եբր. ի կշտամբանաց Աստուծոյ քո [7]Եբր. Տէր քո Եհովայ, եւ Աստուած քո որ ջատագով կայ ժողովրդեան իւրում [8]Եբր. թմրութեան, զմրուր բաժակի [9]Յ Եբր. դ—լ—ե [10]Եբր. եդիր [11]Եբր. եւ իբրեւ հրապարակ անցաւորաց [12]Եբր. զգեցիր զհանդերձս փառաց քոց [13]Եբր. Տէր Եհովայ

[14]Եբր. Ասորեստան վայրապար տառապեցոյց զնա։ (5) Եւ արդ զի՞ կայ իմ աստ, [15]Եբր. որ տիրեն նոցա տան նոցա ողբալ, ասէ Տէր, եւ զօրհանապազ անուն իմ հայհոյի [16]Եբր. ահաւասիկ եմ [17]Եբր. որ լսելի առնէ զխաղաղութիւն, աւետարանչի բարութեան որ լսելի առնէ զփրկութիւն. որ ասէ ցՍիոն թէ Թագաւորեաց Աստուած քո։ (8) Ձայն պահապանաց քոց, բարձրացուցին զձայն, ի միասին գոչեսցեն ցնծութեամբ. զի դէմ յանդիման տեսցեն զդարձ Տեառն ի Սիոն։ (9) Գոչեցէք, բարձէք ձայն ցնծութեան ի միասին, աւերակք Երուսաղեմի, զի մխիթարեաց Տէր զժողովուրդ իւր, փրկեաց զԵրուսաղէմ։ (10) Մերկացոյց [18]Եբր. սրբեցարուք [19]Եբր. շտապաւ [20]Եբր. իմաստութեամբ գնասցէ ծառայ իմ [21]Եբր. զարմացան

անսի [1]քո ի մարդկանէ, եւ [2]փառք
15 քո" յորդւոց ի մարդկանէ,) Այնպէս
զարմասցին ազգք բազումք ի վերայ
[1]քո, եւ կարկեսցեն թագաւորք զբե-
րանս իւրեանց. զի [3]որոց ոչ պատմե-
ցաւ վասն նորա՝ տեսցեն, եւ որոց ոչ
լցէ լուեալ" ի միտ առցեն։

ԳԼ. ԾԳ

1 [4]Տէր, ո՞" հաւատաց լրոյ մերում, եւ
2 բազուկ Տեառն ո՞ւմ յայտնեցաւ։ [5]Պատ-
մեցաք առաջի նորա իբրեւ զմանուկ,"
իբրեւ զարմատ ի ծարաւուտ երկրէ. ոչ
գոյր նորա տեսիլ եւ ոչ [6]փառք. տեսաք
մեք զնա, եւ ոչ գոյր նորա տեսիլ եւ
3 ոչ գեղեցկութիւն. Այլ տեսիլ նորա ա-
նարգ՝ նուազեալ քան զամենայն որդ-
ւոց մարդկան. այր մի ի հարուածս,
եւ գիտէ համբերել ցաւոց. զի դար-
ձուցեալ զերեսս իւր՝ անարգեցաւ եւ
4 ոչ ինչ համարեցաւ։ Նա զմեղս մեր
բառնայ եւ վասն մեր չարչարի, եւ մեք
համարեցաք զնա ի ցաւս եւ ի հա-
րուածս եւ ի չարչարանս իբրեւ յԱստու-
5 ծոյ" Բայց նա վիրաւորեցաւ վասն մե-
ղաց մերոց, եւ պատժեցաւ վասն մերոց
անօրէնութեանց. խրատ խաղաղութեան
մերոյ ի նմա, եւ նորա վիրօքն բժշկե-
6 ցաք։ Ամենեքեան իբրեւ ոչխարք մոլո-
րեալք. այր ի ճանապարհի իւրում [7]մո-
լորեցաւ, եւ Տէր մատնեաց զնա առ
7 մեղս մեր. Եւ նա առ վշտին" ոչ բանայ
զբերան իւր. իբրեւ ոչխար ի սպանդ
վարեցաւ, եւ իբրեւ որոջ առաջի կարչի
անմռունչ կայ, այնպէս ոչ բանայ զբե-
8 րան իւր։ [8]Առ խոնարհութեան նորա
դատաստան նորա" բարձաւ, եւ զազգա-
տոհմն նորա ո՞ պատմեսցէ. զի [9]բառ-
նան յերկրէ կեանք նորա", յանօրէնու-
թեանց ժողովրդեան իմոյ ի մահ վարե-
9 ցաւ։ Եւ [10]տաց զչարս փոխանակ գե-
րեզմանի նորա, եւ զմեծամեծս փոխա-
նակ մահու նորա". զի անօրէնութիւն
ոչ գործեաց, եւ ոչ գտաւ նենգութիւն
ի բերան նորա։
10 Եւ Տէր [11]կամի սրբել զնա ի վիրաց
անտի։ Եթէ տայջիք զվասն մեղացն,
անձինք ձեր տեսցեն զաւակ երկայնա-
կեաց. եւ կամի Տէր ի ձեռն նորա բառ-
11 նալ ի ցաւոց անձին նորա, Ցուցանել
նմա լոյս եւ ստեղծուլ իմաստութեամբ,
արդարացուցանել զարդարն՝ որ մատա-
գիւրն ծառայեաց բազմաց", եւ զմեղս
12 նոցա նա վերացուսցէ։ Վասն այնորիկ
[12]նա ժառանգեսցէ զբազումս, եւ զա-
ւար հզօրաց բաշխեսցէ". փոխանակ զի
ի մահ [13]մատնեցաւ անձն նորա", եւ ընդ
անօրէնս համարեցաւ. եւ նա զմեղս
բազմաց վերացոյց եւ [14]վասն անօրէնու-
թեանց նոցա մատնեցաւ"։

ԳԼ. ԾԴ

1 Ուրախ լեր, ամուլ, որ ոչ ծնանէիր,
զոչեա եւ աղաղակեա որ ոչդ երկնէիր.
զի բազում են որդիք ամայոյն՝ առաւել
քան [15]զարամբւոյն. քանզի ասաց" Տէր,
2 Ընդարձակեա զտեղի խորանի քո եւ
[16]զարահից քոց. կանգնեա, եւ մի՛ խնայ-
եսցես. երկայնեա զապաւանդակս քո,
3 հաստատեա զցիցս քո. Յաջ եւ յահ-
եակ [17]թաւալեսջիր, եւ զաւակ քո զհե-
թանոսս ժառանգեսցէ, եւ զքաղաքս
4 աւերեալս շինեսցեն։ Մի՛ երկնչիցիս, զի
[18]յամօթ արարին զքեզ, մի՛ պատկա-
ռեսցես, զի նախատեցին զքեզ. զի զա-
մօթն յաւիտենից մոռասցիս, եւ նա-

[1]Եբր. նորա [2]Եբր. կերպարանք նորա [3]Եբր. զոր ոչ պատմեցաւ նոցա՝ տեսցեն, եւ զոր չիցէ լուեալ նոցա՝ [4]Եբր. Ո՞ [5]Եբր. Զի բուսաւ իբրեւ ոստ մատաղ առաջի նորա, եւ [6]Եբր. վայելչութիւն, իբրեւ հայէաք ի նա. ոչ գոյին նորա կերպարանք եթէ ախորժէաք ընդ նա։ (3) Անարգեցաւ եւ ընկեցաւ ի նմանէ, եւ որպէս որ թաքուցանիցեն զերեսս ի նմանէ, այնպէս անարգեցաւ, եւ ոչ մեծարեցաք զնա։ (4) Արդարեւ զվիշտս մեր կրեաց նա, եւ զցաւս մեր եբարձ, եւ մեք համարեցաք զնա վիրաւորեալ եւ հարեալ յԱստուծոյ եւ խոնարհեալ։ [7]Եբր. դարձաք, եւ Տէր արկ ի նա զանօրէնութիւնս մեր ամենեցուն։ (7) Զրկեցաւ եւ չարչարեցաւ, եւ [8]Եբր. Յանձկութենէ եւ ի դատաստանէ [9]Եբր. հատաւ յերկրէն կենդանեաց

[10]Եբր. եւ ընդ անօրէնս զգերեզման նորա. և ընդ մեծատան ի մահուան իւրում [11]Եբր. կամեցաւ մատնել զնա ի հարուածս եւ ի ցաւս. եթէ դիցի վասն մեղաց անձն նորա, տեսցէ զաւակ, յերկարեսցէ զաւուրս, եւ կամք Տեառն ի ձեռն նորա յաջողեսցի։ (11) Ի վաստակոց անձին իւրոյ տեսցէ, յագեսցի. գիտութեամբ իւրով արդարացուսցէ արդար ծառայ իմ զբազումս [12]Եբր. տաց նմա մասն ի բազումս, եւ ընդ հզօրս. բաժանեսցի զաւար [13]Եբր. մատնեաց զանձն իւր [14]Եբր. եղեւ միջնորդ անօրինաց [15]Եբր. զարամբւոյն, ասէ [16]Եբր. զվարագոյրս արահից [17]Եբր. ծաւալեսջիր [18]Եբր. ոչ յամօթ եղիցիս, եւ ոչ պատկառեսցես, զի ոչ ամաչեսցես. զի զամօթն մանկութեան քո

խայտառակութեան քո ոչ եւս յուշ
5 լիցին քեզ։ Զի [1]Տէր է որ առնէ քեզ
զայդ՝, Տէր Սաբաովթ անուն է նորա.
եւ որ փրկեացն զքեզ [2]նոյն Աստուած
6 Իսրայէլի՝ ամենայն երկրի կոչեսցի։ [3]Ոչ
եթէ՝ իբրեւ զկին մի լքեալ տարտամեալ կոչեաց զքեզ Տէր, եւ [4]ոչ իբրեւ
զկին մի ատեցեալ ի մանկութենէ. այլ
7 ասաց Աստուած,՝ Առ ժամանակ մի
թողի զքեզ, եւ ողորմութեամբ մեծաւ
8 [5]ողորմեցայց քեզ՝։ Առ փոքր մի բարկութեան դարձուցի զերեսս իմ ի քէն, եւ
ողորմութեամբ յաւիտենից ողորմեցայց
9 քեզ, ասաց որ փրկեացն զքեզ Տէր։ [6]Եւ
ի ջրոյն հեղեղէ առ Նոյիւ՝ այս է ինձ,
որպէս երդուայն նմա ի ժամանակին
յայնմիկ չբարկանալ երկրի, նոյնպէս եւ
10 ոչ քեզ, Եւ ոչ սպառնալեօք իմովք
շարժել զլերինս, եւ փոփոխել զբլուրս.
ոչ ողորմութիւն իմ պակասեսցէ ի քէն.
եւ ոչ ուխտ խաղաղութեան քո անցցէ,
11 ասաց Տէր։ Հաշտեալ եմ ընդ քեզ,
տառապեալդ եւ խախտեալ, մինչեւ
մխիթարեսցիս՝. ահաւասիկ պատրաստեալ եմ կարկեհան զքարինս քո, եւ
12 զհիմունս քո շափիղա։ Եւ կանգնեցից
զաշտարակս քո յասպիս, եւ զդրունս
քո յակինթ վանակայց. եւ [7]ածից շուրջ
զքեւ պարիսպ՝ յընտիր ընտիր ականց
13 պատուականաց. Եւ [8]զամենայն որդիս
քո խրատեալս Աստուծոյ՝, եւ ի բազում
14 խաղաղութեան մանկունք քո. Եւ արդարութեամբ շինեսջիր, [9]ի բաց լեր յանիրաւէ ամար, եւ ոչ երկիցես. եւ
15 զդողումն ի քեզ ոչ մերձեսցի. Զի ահաւասիկ եկք՝ առ քեզ վասն իմ մերձեսցին, եւ առ քեզ պանդխտեսցին, եւ
16 զքեզ ապաստան արասցեն։ Ահաւասիկ ես հաստատեցի զքեզ. ոչ որպէս դարբին մի որ փչիցէ կայծակունս արծարծանէ եւ յառաջ բերէ անօթս ի գործ, այլ ես հաստատեցի զքեզ ոչ ի կորուստ
17 ապականութեան՝ Ամենայն անօթ վնասակար ի քեզ ոչ աջողեսցի. եւ զամենայն բարբառ որ յարիցէ ի վերայ քո ի դատաստանի պարտեսցես, [10]եւ ամենայն դատախազք քո ի նմին. զի դոյ՝ ժառանգութիւն պաշտօնէից Տեառն. եւ [11]դուք եղիջիք ինձ իրաւացիք՝ ասէ Տէր։

## ԳԼ. ԾԵ

1 Ո՛վ որ ծարաւիդ էք՝ երթայք ի ջուր. եւ
որ միանգամ ոչ ունիք արծաթ, երթայք
գնեցէք. եւ կերիջիք առանց արծաթոյ եւ
2 գնոյ [12]գինւոյ. Եւ զճարպ ընաւ ընդէ՞ր
իսկ գնէք արծաթոյ՝ եւ ոչ հացի,՝ եւ
զվաստակս ձեր ոչ ի յագուրդ. լուարուք ինձ՝ եւ կերիջիք զբարութիւնս,
եւ վայելեսցեն ի բարութեան անձինք
3 ձեր։ Ունկնդիր լերուք լսելեօք ձերովք,
[13]զհետ եկայք ճանապարհաց իմոց՝.
լուարուք ինձ, եւ կեցցեն [14]ի բարութեան անձինք ձեր. եւ եդից ընդ ձեզ
ուխտ յաւիտենական [15]զսրբութիւնն
4 Դաւթի զհաւատարիմս։ Ահաւասիկ ի
վկայութիւն հեթանոսաց ետու զնա, իշ-
5 խան եւ հրամանատար ազգաց։ [16]Ազգք
որ ոչ գիտէին՝ կարդասցեն առ քեզ՝,
եւ ժողովուրդք որ զքեզ ոչ ճանաչէին՝
ապաստան արասցեն զքեզ, վասն Տեառն
Աստուծոյ քո, Սրբոյն Իսրայէլի, զի
փառաւոր արար զքեզ։
6 Խնդրեցէք զՏէր [17]եւ յորժամ գտանիցէք զնա՝, կարդացէք առ նա [18]եւ
7 իբրեւ մերձեսցի առ ձեզ,՝ Թողցէ ամպարիշտն զճանապարհս իւր, եւ այր
անօրէն զխորհուրդս իւր. եւ դարձցի
առ Տէր եւ [19]գտցէ զողորմութիւն՝. եւ
առ Աստուած մեր՝ զի բազմապատիկ

---

[1] Եբր. այր քո Արարիչ քո է [2] Եբր. Սուրբն Իսրայէլի է, նա Աստուած [3] Եբր. Զի [4] Եբր. իբրեւ զկին մանկամարդ ատեցեալ, ասէ Աստուած քո [5] Եբր. ժողովեցից զքեզ [6] Եբր. Զի ջուրք Նոյի են ինձ այս, որում երդուայ չանցանել ջուրց Նոյի այլ եւս ի վերայ երկրի, այնպէս երդուայ չբարկանալ քեզ եւ չյանդիմանել զքեզ։ (10) Զի լերինք խուսեսցեն, և բլուրք շարժեսցին, սակայն ողորմութիւն իմ մի՛ խուսափեսցէ ի քէն, և ուխտ խաղաղութեան իմոյ մի՛ շարժեսցի. ասէ որ ողորմին քեզ Տէր։ (11) Նեղեալդ, խախտեալդ ի մրրկէ, ոչ սփոփեալդ ի մխիթարութենէ [7] Եբր. զամենայն սահման քո [8] Եբր. ամենայն որդիք քո ուսեալք ի Տեառնէ [9] Եբր. հեռի եղիցիս ի բռնութենէ, զի ոչ երկիցես, եւ յարհաւրաց՝ զի ոչ մերձեսցին առ քեզ։ (15) Ահաւասիկ ժողովելով ժողովեսցին, ոչ յինէն, եւ որ ժողովի ընդդէմ քեզ ի վերայ քո՛ անկցի։

(16) Ահա ես արարի զդարբին որ արծարծէ կայծակունս հրոյ, եւ կազմէ անօթս ի պէտս իւր. եւ ես արարի զաւերիչն յապականութիւն։ [10] Եբր. այս է [11] Եբր. արդարութիւն նոցա յինէն է՛ [12] Եբր. գինի եւ կաթն։ (2) Ընդէ՞ր կշռէք արծաթ յոր չէն հաց, [13] Եբր. եկայք առ իս [14] Յ Եբր. [illegible] [15] Եբր. զողորմութիւնսն [16] Եբր. Ահաւասիկ զազգ զոր ոչ գիտես՝ կոչեսցես [17] Եբր. մինչդեռ գտանի, [18] Եբր. ցորչափ մերձ է։ [19] Եբր. նա ողորմեսցի նմա

8 թողցէ զանօրէնութիւնս ձեր։ Զի ոչ
են խորհուրդք իմ իբրեւ զխորհուրդս
ձեր, եւ ոչ ճանապարհք իմ իբրեւ զճա-
9 նապարհս ձեր՝ ասէ Տէր։ Այլ որպէս
հեռի են երկինք յերկրէ, այնպէս հեռի
են ճանապարհք իմ ի ճանապարհաց
ձերոց, եւ խորհուրդք իմ ի խորհրդոց
10 ձերոց։ Զոր օրինակ եթէ իջանիցէ
անձրեւ կամ ձիւն յերկնից, եւ անդրէն
ոչ դառնայ մինչեւ արբուսցէ զերկիր,
ծնցի եւ բղխեսցէ, եւ տացէ սերմն սեր-
11 մանողի եւ հաց ի կերակուր, Այնպէս
եղիցի բանն իմ որ ելանէ ի բերանոյ
իմմէ. մի՛ դարձցի դատարկ՝ մինչեւ կա-
տարեսցէ զոր ինչ կամեցայ. եւ [1]ուղ-
ղեցից զճանապարհս քո, եւ զճանա-
12 պարհս իմ պահեսցես"։ Զի ուրախու-
թեամբ ելջիք, եւ [2]ցնծութեամբ ուսա-
նիջիք". զի լերինք եւ բլուրք կայ-
տառեսցեն [3]ընդունել զձեզ" ուրախու-
թեամբ, եւ ամենայն ծառք անտառի
13 ծափս հարցեն [4]ոստովք իւրեանց"։ Եւ
փոխանակ ցրդւոյն նոճ բուսցի, եւ
փոխանակ գմնկին մուրտ եղիցի. եւ
եղիցի Տեառն յանուն եւ ի նշան յաւի-
տենից, եւ մի՛ պակասեսցէ։

## Գլ. ԾԶ

1 Այսպէս ասէ Տէր. Զգոյշ կացէք իրա-
ւանց եւ գործեցէք զարդարութիւն,
զի եկեալ հասեալ է փրկութիւն իմ,
2 եւ յայտնելոց է ողորմութիւն իմ։ Ե-
րանի առն որ առնիցէ զայն, եւ մար-
դոյ որ կալցէ ի նմին, եւ պահիցէ
զշաբաթս իմ եւ ոչ պղծիցէ, եւ
պահիցէ զձեռս իւր յամենայն զանի-
3 րաւութենէ։ Մի՛ ասասցէ օտարազգին
որ եկեալ յարեալ իցէ ի Տէր, եթէ Մեր-
ժելով մերժեսցէ զիս Տէր ի ժողովրդե-
նէ իւրմէ. եւ մի՛ ասասցէ ներքինին՝
4 թէ Ես եմ փայտ չոր։ Այսպէս ասէ Տէր
ցներքինիսն որ պահիցեն [5]զպահպա-
նութիւնս իմ, եւ ընտրեսցեն զոր կա-
5 միմ, եւ կալցեն յուխտին իմում. Տաց
նոցա ի տան իմում, եւ ընդ պարսպաւ
իմով տեղի [6]անուանի, առաւել քան
զուստերաց եւ զդստերաց, եւ անուն
յաւիտենական տաց նոցա՝ եւ մի՛ պա-
6 կասեսցէ։ Եւ զայլազգիսն որ եկեալ
յարեալ իցեն ի Տէր՝ ծառայել նմա եւ
սիրել զանուն նորա, լինել նմա ի ծա-
ռայս [4]եւ յաղախնայս, եւ" զամենեսեան
որք պահիցեն զշաբաթս իմ եւ ոչ պղծի-
7 ցեն, եւ կալցեն յուխտին իմում. Տա-
րայց զնոսա ի լեառն սրբութեան իմոյ,
եւ ուրախ արարից զնոսա ի տան ա-
ղօթից իմոց. ողջակէզք նոցա եւ պա-
տարագք նոցա ընդունելի եղիցին ի վե-
րայ սեղանոյ իմոյ. զի տուն իմ տուն
աղօթից կոչեսցի ամենայն հեթանոսաց։
8 Ասաց Տէր [7]Տէր, որ ժողովէ զցրու-
եալսն Իսրայելի, [8]եթէ Ժողովեցից ի
9 վերայ նորա ժողով։ Ամենայն գազա-
նաց անտառի. եկայք կերայք ամե-
10 նայն գազանք անտառի։ Տեսէք զի կու-
րացան ամենեքին, եւ" ոչ գիտեն զհան-
ճար. ամենեքին իբրեւ շունք համրա-
ցեալք որ ոչ կարիցեն հաջել. յերազա-
նան յանկողինս իւրեանց, սիրեն զնիր-
11 հել։ Իբրեւ շունք լկրք եղեն յանձինս
իւրեանց որ ոչ գիտեն զյագուրդ. եւ
են [9]չարք՝ եւ" ոչ ճանաչեն զհանճար.
ամենեքին [10]ըստ իւրաքանչիւր ճանա-
12 պարհաց իւրեանց գնացին" Եկայք առ-
ցուք զինի, եւ [11]զինեհարեսցուք արբե-
ցութեամբ, եւ եղիցի այսօրինակ օրն մեզ
զոր" մեծ առաւել յոյժ։

## Գլ. ԾԷ

1 [12]Տեսէ՞ք զիարդ կորեաւ" արդարն, եւ
չիք ոք որ անսայ սրտիւ. եւ արք ար-
դարք բառնան, եւ ոչ ոք [13]հայի. զի"
յերեսաց անիրաւութեան բառնայ ար-
2 դար։ [14]Եղիցի խաղաղութեամբ գերեզ-
3 ման նորա, զի բարձաւ ի միջոյ" Բայց
դուք մատիք յառաջ, որդիք [15]անօրէնք,
որդիք սոանկորդիք, որդիք չնութեան.
4 [16]Ի՞ւ սերճացարուք, կամ յո՞յր վերայ
բացէք զբերանս ձեր, կամ առ ո՞ ար-
ձակեցէք զլեզուս ձեր. ո՞չ դուք որդիք

[1] Եբր. յաջողեսցի յոր առաքեցից զնա [2] Եբր. խաղաղութեամբ վարիջիք [3] Եբր. առաջի ձեր [4] Յեբր. դաշտի [5] Եբր. զշաբաթս [6] Եբր. և անուն

[7] Եբր. Եհովայ [8] Եբր. Ժողովեցից եւս ի վերայ ժողովելոց նորա։

(9) Ամենայն գազանք վայրի, եկայք ուտել. ամենայն երէք անտառի։ (10) Դէտք նորա կոյրք. ամենեքին նոքա [9] Եբր. Հովիւք որ [10] Եբր. ի ճանապարհս իւրեանց դէմ եդին երթալ, այր ի կողմուստ իւր ի ծագացիւրոց, [illegible], [11] Եբր. արբցուք օղի. այսպէս եղիցի եւ օրն վաղուի, [12] Եբր. Կորեաւ [13] Եբր. ածէ զմտաւ եթէ [14] Եբր. Մտցէ խաղաղութեամբ. հանգիցեն յանկողինս իւրեանց, որ գնան առաջի նորա ուղղութեամբ։ [15] Եբր. վհկի [16] Եբր. Յո՞յր վերայ

¹կորստեան էք, զաւակ անօրէնու-
5 թեան. Որ անկեալ աղաչէիք զկուռս
ձեր ի ներքոյ անտառախիտ ծառոց,
զոհէիք զորդիս ձեր ի խորաձորս ի մէջ
գլխոց վիմաց, եւ ի կողմանս ձորոյն։
6 Այն է բաժին քո եւ նոյն վիճակ քո՝՝.
նոցա հեղեր նուէրս, եւ նոցին մատու-
ցեր զոհս. ի վերայ ²այսր ամենայնի
7 ո՞չ բարկանայցեմ, ասէ Տէր՝՝։ Ի լերինն
մեծի եւ բարձու ³անդ է անկողին՝՝ քո,
8 եւ անդր ելեր զոհել զոհս։ Եւ յետոյ
դրանդեաց դրանց քոց հաստատեցեր
զյիշատակս քո. ⁴կարծէիր՝ եթէ յինէն
ի բաց կայցես՝ աւելի ինչ գտանիցես։
Լայնեցեր զանկողինս քո, եւ տարա-
ծեցեր զքեզ առ նոքօք. սիրեցեր զնո-
9 մանիս քո, Եւ բազմացուցեր զպոռ-
նկութիւնս քո առ նոսա. եւ զբազումս
ի հեռաւորաց արարեր քեզ, եւ առա-
քեցեր զհրեշտակս արտաքոյ սահմանաց
10 քոց։ Նկուն եղեր եւ իջեր ի դժոխս.
աշխատեցար ի բազում ճանապարհոր-
դութիւնս քո, եւ ոչ ասէիր թէ Արդ
հանգեայց, զի զայն առ ուժի գործէիր.
վասն այնորիկ ոչ հնազանդեցար ինձ։՝՝
11 Յումէ՞ զանգիտեցեալ զարհուրեցար,
զի ստեցեր ինձ եւ ոչ յիշեցեր զիս, եւ
⁵ոչ ածեր զմտաւ եւ ոչ եդիր ի սրտի
քում. եւ ես տեսի զքեզ եւ անտես
արարի. ես այն եմ որ յաւիտենից
եմ՝՝, եւ դու յինէն ոչ զանգիտեցեր։
12 Արդ ես պատմեցից զարդարութիւն ⁶իմ
եւ զչարիսն՝՝ քո, որք ոչ օգնեսցեն քեզ։
13 Յորժամ աղաղակիցես, ⁷եւ ոչ ապրե-
ցուսցեն զքեզ ի նեղութենէ քումմէ՝՝.
զի զամենեսեան զնոսա հողմք ⁸առցեն
եւ մրրիկք բաժանեսցեն՝՝. իսկ որ յինէն
յուսացեալ են՝ ստասցին զերկիր, եւ
ժառանգեսցեն զլեառն սրբութեան ի-
14 մոյ. Եւ ասասցեն, ⁹Հորդեցէք առաջի
նորա զճանապարհս, եւ՝՝ ի բաց արա-
րէք զխոչ եւ զխութ ի ճանապարհէ ժո-
15 ղովրդեան իմոյ։ Այսպէս ասէ Բարձ-
րեալն՝ որ ի բարձունս բնակեալ է յա-
ւիտեան, ¹⁰Սուրբն ի մէջ սրբոց. որոյ
անուն բարձրեալ է եւ ի սուրբս հան-
գուցեալ, որ տայ երկայնմտութիւն տա-
րակուսելոց, եւ կեանս այնոցիկ՝ որ
16 մաշեալ են սրտիւք. Եւ ոչ յաւիտեան
խնդրեցից վրէժս ի ձէնջ, եւ ոչ ցանգ
բարկացայց ձեզ. զի հոգի յինէն ելցէ,
17 եւ զամենայն շունչ ես արարի։ Վասն
մեղաց առ սակաւ մի տրտմեցուցի զնա,
հարի զնա՝ եւ դարձուցի զերեսս իմ ի
նմանէ, եւ տրտմեցաւ եւ գնաց թախ-
ծեալ առաջի իմ զճանապարհս իւր։
18 Զճանապարհս սրտի նորա տեսի, եւ
բժշկեցի զնա. մխիթարեցի զնա, եւ
ետու նմա մխիթարութիւն ճշմարտու-
19 թեան, եւ ողջ որոց նորա։ Հաստա-
տեցի պտուղ՝՝. խաղաղութիւն ի վե-
րայ խաղաղութեան՝ հեռաւորաց եւ մեր-
ձաւորաց, ասէ Տէր, եւ ես բժշկեցից
20 զնոսա։ Այլ անօրէնք իբրեւ զծով ծփես-
ցին, ¹¹եւ հանգիստ մի՛ գտցեն. եւ կո-
րիցէ ջուր նորա ի կոխումն եւ ի կաւ՝՝։
21 Ոչ գոյ խաղաղութիւն ամպարշտաց,
ասէ ¹²Տէր։

## Գլ. ԾԸ

1 Գոչեա զօրութեամբ եւ մի՛ խնայեր,
բարձրացո իբրեւ զփողոյ զբարբառ քո,

---

¹ Եբր. անօրէնութեան էք, զաւակ ստութեան։ (5) Որ ջերանիք ի բեւեկնիս ի ներքոյ ամենայն անտառախիտ ծառոյ. զենուք զմանկունս ի խորաձորս ընդ փապարօք վիմաց։ (6) Յողորկս հեղեղատին բաժին քո, նոքա, նոքա են վիճակ քո ² Եբր. այսոցիկ հաճեցի՞ց։ ³ Եբր. եդիր զանկողին ⁴ Եբր. յինէն մերկացար եւ ելեր. լայնեցեր զանկողին քո, եւ եդիր ուխտ ընդ նոսա. սիրեցեր զանկողինս նոցա ուր եւ տեսեր։ (9) Մատեար առ թագաւորն իւղով. բազմացուցեր զօծանելիս քո, եւ առաքեցեր զհրեշտակս քո մինչեւ ի հեռաստան, եւ խոնարհեցուցեր զքեզ մինչեւ ի դժոխս։ (10) Ի բազմութեան ճանապարհաց քոց աշխատ եղեր. ոչ ասացեր, Զիք յոյս. գտեր զկեանս ձեռաց քոց. վասն այնորիկ ոչ նուաղեցար։ ⁵ Եբր. ոչ եդիր ի սրտի քում. միթէ ո՞չ լռեմ ի վաղուց ⁶ Եբր. քո եւ զգործս ⁷ Եբր. ապրեցուսցեն զքեզ զօրս ժողովեցերդ

⁸ Եբր. բարձցեն, բարձցէ ունայնութիւն ⁹ Եբր. Հարթեցէք, հարթեցէք. հորդեցէք ճանապարհ։ ¹⁰ Եբր. եւ Սուրբ է անուն նորա. Ի բարձունս եւ ի սրբութեան բնակիմ, այլ եմ ընդ բեկելոյն եւ խոնարհին ոգւով, կենդանացուցանել զհոգին խոնարհաց, եւ կենդանացուցանել զսիրտ բեկելոց։ (16) Զի ոչ յաւիտեան մարտեայց, եւ ոչ մինչեւ ի սպառ ցասեայց, զի ոգիք յերեսաց իմոց նուաղէին, և շունչք զորս արարի։ (17) Վասն անօրէնութեան ագահութեան նորա բարկացայ, եւ հարի զնա թաքուցեալ, եւ բարկացայ, եւ գնաց ապստամբն զճանապարհ սրտի իւրոյ։ (18) Տեսի զճանապարհս նորա, եւ բժշկեցից զնա, եւ առաջնորդեցից նմա. եւ մխիթարեցից զնա և զսգաւորս նորա։ (19) Ես հաստատեմ պտուղ շրթանց ¹¹ Եբր. որ հանգչել ոչ կարէ, եւ արձակեն ջուրք նորա տիղմ եւ կաւ ¹² Եբր. Աստուած իմ

պատմեա ժողովրդեան իմում զմեղս
նոցա, եւ տանն Յակոբայ զանօրէնու-
2 թիւնս նոցա։ Զիս օր ըստ օրէ խնդրեն,
եւ ճանաչել զճանապարհս իմ ցանկան,
իբրեւ ժողովրդեան որոյ զարդարութիւն
գործեալ իցէ, եւ զիրաւունս Աստու-
ծոյ իւրոյ չիցէ թողեալ. արդ ենեալ
խնդրեն զիրաւունս արդարութեան.
3 կարօտին մերձենալ առ Աստուած. Եւ
ասեն, Զի՞ է զի պահեցաք մեք՝ եւ դու
ոչ տեսեր, խոնարհեցուցաք զանձինս
մեր՝ եւ դու ոչ գիտացեր։ Զի յաւուրս
պահոց ձերոց գտանեն կամք ձեր կա-
տարեալ, եւ կսկծեցուցանէք զամենե-
4 սեան որ ընդ ձեռամբ ձերով են։ Ի հա-
կառակութիւնս եւ ի կռիւս պահէք,
եւ[1] կոփէք զանաւագն. իսկ զի՞նչ պիտոյ
է ինձ այնպիսւոյ աւուր պահք. դոլ
բարբառել ձեր առ իս, եւ ինձ ոչ լսել
5 ձեզ, Ոչ զայսպիսի պահս ընտրեցի, եւ
ոչ զօրն՝՝ յորում կարկամեցուցանէ մարդ
զանձն իւր. [2]զի եթէ կորացուցանես իբ-
րեւ զանուր զպարանոց քո, եւ քուրձ
եւ մոխիր ի ներքոյ տարածանիցես, սա-
կայն եւ ոչ զայն կոչեցի պահս եւ օր
ընդունելի. ոչ զայնպիսի պահս ընտ-
6 րեցի՝ ասէ Տէր։ Այլ լոյծ զկնճիռ ա-
նիրաւութեան, քակեա զխարդախու-
թիւն բռնութեան վաճառաց քոց, ար-
ձակեա զնեղեալս թողութեամբ, եւ
զամենայն մուրհակս անիրաւութեան
7 պատառեա՝՝։ Բրդեա քաղցելոց զհաց
քո, եւ զաղքատս անյարկս տար ի տուն
քո. եթէ տեսանիցես զմերկն՝ զգեցու-
ցանիջիր, եւ [3]յընտանեաց զաւակի քո
8 զակն մի՛ արկանիցես՝՝։ Յայնժամ ծա-
գեսցի կանուխ լոյս քո, եւ բժշկու-
թիւնք քո վաղվաղակի հասցէ, եւ գնաս-
ցէ առաջի քո արդարութիւն քո, եւ
փառքն [4]Աստուծոյ զքեւ փակեսցին։
9 Յայնժամ կարդասցես, եւ [5]Աստուած
լուիցէ քեզ. եւ մինչդեռ խօսիցիս, ա-
սասցէ թէ Ահաւասիկ հասեալ կամ, եւ
եթէ մերժեսցես դու ի քէն [6]զկնճիռ եւ
զձեռնարկութիւն եւ զբանս տրտնջման՝՝,
10 Եւ տացես քաղցելոց զհաց քո սրտի
մտօք, եւ զանձինս կարօտեալս յագե-
ցուսցես, յայնժամ ծագեսցէ ի խաւարի
լոյս քո, եւ խաւարն քո իբրեւ զմի-
11 ջօրեայ. Եւ [7]եղիցի Աստուած քո ընդ
քեզ յամենայն ժամ, եւ լցցի ըստ ցան-
կութեան անձն քո, եւ ոսկերք քո պա-
րարեսցին, եւ եղիցին՝՝ իբրեւ զպար-
տէզ ջրարբի, եւ իբրեւ զաղբեւր ուս-
12 տի ջուր ոչ պակասեսցէ։ Եւ [8]շինես-
ցին աւերակք քո յաւիտենից, եւ եղի-
ցին հիմունք քո մշտնջենաւորք, ազգաց
յազգս՝՝ կանգնեսջիր, եւ կոչեսջիր Խրա-
մակարկատ ցանգոյ, [9]եւ զընդմիջնա-
13 շաւիղս նոցա դադարեցուցես՝՝։ Եթէ
դարձուցես[10] զոտն քո՝ չառնել զկամս
քո յաւուրն սրբութեան[11], եւ կոչեսցես
զշաբաթն փափուկս նուիրեալս [4]Աս-
տուծոյ եւ փառաւորեալս, եւ [12]ոչ փո-
խեսցես զոտն քո ի գործ, եւ ոչ խօ-
սեսցիս բան ինչ բարկութեան բերանով
14 քով, եւ եղիցես յուսացեալ ի Տէր։ Եւ
տարցի զքեզ ի բարութիւնս երկրին, եւ
ջամբեսցէ՝՝ քեզ զժառանգութիւն Յա-
կոբայ հօր քո. զի բերան Տեառն խօ-
սեցաւ զայս։

## ԳԼ. ԾԹ

1 Միթէ ո՞չ իցէ կարօղ ձեռն Տեառն
փրկել, կամ ծանրացո՞յց ինչ զունկն իւր
2 զի մի՛ լուիցէ։ Այլ մեղքն ձեր որոշեն ի
մէջ ձեր եւ ի մէջ Աստուծոյ. եւ վասն
անօրէնութեանց ձերոց դարձոյց զերեսս
3 իւր ի ձէնջ՝ զի մի՛ [13]ողորմեսցի։ Զի ձեռք
ձեր պղծեալ են արեամբ, եւ մատունք
ձեր ի մեղս. շրթունք ձեր խօսեցան
զանօրէնութիւն, եւ լեզուք ձեր խօ-

[1] Եբր. Հանել կռուփս անիրաւութեան. մի՛ պահէք որպէս այսօր, լսելի առնել ի բարձունս զբարբառ ձեր։ (5) Միթէ այսպիսի՞ իցեն պահք զոր ես ընտրեցի, օրն [2] Եբր. միթէ ի կորացուցանել իբրեւ զկնիւն զգլուխ իւր եւ տարածել քուրձ եւ մոխի՞ր. միթէ զա՞յս կոչես պահս եւ օր ընդունելի Տեառն։ (6) Ո՞չ ապաքէն այս են պահք զոր ես ընտրեցի. քակեսջիր զկապանս անօրէնութեան, լոյծ զամենայն լծոյն, եւ արձակեա զբեկեալս ազատս, եւ զամենայն լուծ խորտակեա։ [3] Եբր. ի մարմնոյ քումմէ մի՛ թաքուցանէր զքեզ [4] Եբր. Տեառն [5] Եբր. Տէր

[6] Եբր. զլուծ և ձգել զմատն և խօսել զանզգամութիւն [7] Եբր. առաջնորդեսցէ քեզ Տէր յամենայն ժամ, և յագեցուսցէ յերաշտի զանձն քո, եւ զոսկերս քո պարարեսցէ, եւ եղիցիս [8] Եբր. շինեսցեն որ ի քէն զաւերակս ի վաղուց, զհիմունս ազգաց յազգս [9] Եբր. որ դարձուցանէ զշաւիղս ի բնակութիւն [10] Եբր-յեցին յ—ել—, ի շաբաթէ [11] Եբր-յեցին յ—ել—, իմոյ [12] Եբր. փառաւորեսցես զնա չգնալ զճանապարհս քո, չկատարել զկամս քո, և չխօսել բանս ունայնութեան, (14) Յայնժամ ուրախ եղիցիս ի Տէր, եւ տաց քեզ հեծանել ի վերայ բարձանց երկրի, եւ ջամբեցից [13] Եբր. լուիցէ

4 կան զանիրաւութիւն։ Չիք ոք որ խօսի
զարդարութիւն, եւ ոչ գոն իրաւունք
ճշմարտութեան. յուսացեալ են ի նան-
միս, եւ խօսին զունայնութիւն. զի
յղանան զցաւս, եւ ծնանին զանօրէ-
5 նութիւն։ Զձուս քարբից [1]ծակեցին,
եւ զոստայն սարդից անկանեն. [2]եւ որ
կամիցի ուտել ի նոցանէն, ծակեաց բաց՝
6 եւ եգիտ ջուր, եւ ի նմին քարբ"։ Ոս-
տայնք նոցա ոչ ձորձեսցին, եւ ոչ զգեցցին
ի գործոց ձեռաց իւրեանց. քանզի գործք
նոցա գործք անօրէնութեան են, եւ
գործք անիրաւութեան ի ձեռս նոցա։
7 Ոտք նոցա ի չարիս ընթանան, վաղվա-
գեն հեղուլ զարիւն անպարտ. խոր-
հուրդք նոցա խորհուրդք անզգամաց.
բեկումն եւ թշուառութիւն ի ճանա-
8 պարհս նոցա. Եւ զճանապարհն խաղա-
ղութեան ոչ ծանեան, եւ ոչ գոն իրա-
ւունք ի ճանապարհս նոցա. զի շաւիղք
նոցա ընդ որ գնան՝ խոտորեալք են,
9 [3]եւ ոչ ծանեան զխաղաղութիւն"։ Վասն
այնորիկ հեռացան [4]ի նոցանէ իրաւունք,
եւ մի հասցէ առ նոսա արդարու-
թիւն. մինչդեռ ակն ունէին լուսոյ՝ եղեւ
նոցա խաւար. եւ մինչդեռ սպասէին նմա,
10 ընդ մութ շրջեցան. Շօշափեսցեն" զորմս
իբրեւ կոյրք, եւ իբրեւ զաչացուս [5]խար-
խափեսցեն, եւ գլորեսցին" ի միջօրէի
իբրեւ ի հասարակ գիշերի, եւ իբրեւ
օրհասականք [6]ընդ ողխս ջանասցեն,
11 Եւ իբրեւ զարջս եւ իբրեւ զաղաւնիս
առ հասարակ սահեսցին". կացաք
մնացաք իրաւանց՝ եւ ոչ էր, փրկու-
12 թեան՝ եւ հեռացաւ ի մէնջ։ Զի բա-
զում են անօրէնութիւնք մեր առաջի
քո, եւ մեղք մեր հակառակ կացին մեզ.
զի անօրէնութիւնք մեր ի մեզ են, եւ
զանիրաւութիւնս մեր՝ մեք մեզէն գի-
13 տեմք։ Ամպարշտեցաք եւ ստեցաք
Տեառն, եւ դարձաք յետս յԱստուծոյ
մերմէ. խօսեցաք զանիրաւութիւն՝ եւ
հեստեցաք. յղացաք եւ ոռճացաք ի
սրտաս մեր զբանս անիրաւութեան։
14 Յետս [7]հարաք զիրաւունս", եւ արդա-
րութիւն հեռացաւ ի մէնջ. զի [8]սպա-
ռեցաւ ի ճանապարհաց նոցա ճշմար-
տութիւն, եւ ընդ ուղղորդն ոչ կարա-
ցին գնալ, եւ արդարութիւն բարձաւ
15 ի նոցանէ. Մերժեցին զմիտս իւրեանց
յիմանալոյ"։ Ետես Տէր՝ եւ ոչ հաճե-
16 ցաւ, զի ոչ գոյին իրաւունք։ Հայեցաւ՝
եւ ոչ գոյր մարդ. [9]ետես՝ եւ ոչ գոյր
որ օգնական լինէր. եւ հատոյց նոցա
բազկաւ իւրով, եւ ըստ ողորմութեան
17 իւրում հաստատեաց"։ Եւ զգեցաւ իբ-
րեւ զրահս զարդարութիւն, եւ եդ ի
գլուխ իւրեւ զսաղաւարտ զփրկու-
թիւն, եւ արկաւ զիւրեւ հանդերձ [10]եւ
պատմուճան վրէժխնդրութեան՝ հատու-
18 ցանել զհատուցումն. Եւ նախատինս
հակառակորդաց եւ" կղզեաց հատուցէ
19 զհատուցումն։ Եւ երկիցեն յարեւմտից
յանուանէ Տեառն, եւ յարեւելից [11]ի փա-
ռաւորեալ անուանէ" նորա. զի եկես-
ցէ իբրեւ գետ [12]ըռնութեամբ բարկու-
թիւն ի Տեառնէ, հասցէ սրտմտու-
20 թեամբ։ Եւ եկեսցէ ի Սիոնէ փրկիչ,
եւ դարձուսցէ զամպարշտութիւնս Յա-
21 կոբայ", ասէ Տէր։ Եւ այս նոցա որ յի-
նէն ուխտ, ասէ Տէր. Հոգին իմ որ է
ի քեզ եւ բանք զոր ետու ի բերան քո՝
մի պակասեսցեն ի բերանոյ քումմէ եւ
ի բերանոյ զաւակի քո. եւ ի բերանոյ
զաւակէ զաւակի քո, ասէ Տէր, յայսմ-
հետէ մինչեւ յաւիտեան։

ԳԼ. Կ

1 [13]Լուսաւորեաց, լուսաւորեաց, Երու-
սաղէմ", զի հասեալ է լոյս քո, եւ
փառք Տեառն ի վերայ քո [14]ծագեցին։
2 Զի ահա խաւար ծածկեաց զերկիր, եւ

[1] Եբր. թխեն [2] Եբր. որ ուտէն ի ձուոց նոցա՝ մեռցի, եւ իբրեւ խորտակեսցի, եղցէ իժ [3] Եբր. ամենայն որ կոխէ ի նոսա՝ ոչ ծանեաւ զխաղաղութիւն [4] Եբր. ի մէնջ իրաւունք, և ոչ հասանէ առ մեզ արդարութիւն. ակն ունէաք լուսոյ, և ահա խաւար, պայծառութեան՝ ընդ մութ շրջեցաք։ (10) Շօշափեցաք [5] Եբր. խարխափեցաք. գլորեցաք [6] Եբր. ի մէջ պարարելոց։ (11) Մռնչեմք իբրեւ զարջս, եւ իբրեւ զաղաւնիս մնչելով մնչեմք

[7] Եբր. Հարան իրաւունք [8] Եբր. գթեցաւ ի հրապարակի ճշմարտութիւն, եւ ուղղութիւն ոչ կարաց մտանել։ (15) Եւ ճշմարտութիւն պակասեաց, եւ որ ի բաց կայ ի չարութենէ՝ կողոպտի [9] Եբր. զարմացաւ զի չգոյր բարեխօս, եւ օգնեաց նմա բազուկ իւր, եւ արդարութիւն նորա՝ նա եղեւ նմա զօրավիգն [10] Եբր. զպատմուճան վրէժխնդրութեան, եւ ագաւ իբրեւ վերարկու զնախանձ. (18) Իբրեւ ի հատուցումն. իբրեւ փոխարէն՝ հատուցէ, բարկութիւն հակառակորդաց իւրոց, հատուցումն թշնամեաց իւրոց. [11] Եբր. ի փառաց [12] Եբր. թշնամին. Հոգի Տեառն կանգնեսցէ դրօշ ընդդէմ նորա։ (20) Եւ եկեսցէ ի Սիոն Փրկիչ, եւ առ դարձեալս յանօրէնութենէ ի Յակոբ, [13] Եբր. Արի, լուսաւորեաց [14] Եբր. ծագեցին

մառախուղ զհեթանոսս. բայց ի քեզ
Տէր յայտնեսցի, եւ փառք նորա ի քեզ
3 երեւեսցին։ Եւ գնասցեն [1]թագաւորք ի
լոյս քո, եւ [2]հեթանոսք ի ծագել լուսոյ
4 քո։ Համբարձ շուրջ զաչս քո, եւ
[3]տես ժողովեալ առ քեզ զամենայն
մանկունս քո. զի՞ եկին հասին ի հե-
ռաստանէ որդիք քո, եւ դստերք քո
[4]ի վերայ ուսոց նոցա բարձեալ բերցին՞։
5 Յայնժամ տեսցես եւ խնդասցես, [5]երկի-
ցես եւ զարհուրեսցիս ի սրտի քում. զի
փոխեսցի ի քեզ մեծութիւն ծովու եւ
6 ազգաց եւ ժողովրդոց։ Եկեսցեն ի քեզ
երամակք ուղտուց, եւ ծածկեսցեն զքեզ
ուղտերամակքն՞ Մադիամու եւ Գեփայ.
ամենեքեան ի Սաբայ եկեսցեն, բերել ոսկի
եւ կնդրուկ [6]եւ ականս պատուականս՞,
եւ զփրկութեան Տեառն ասցեն զաւետիս։
7 Եւ ամենայն խաշինքն Կեդարու ժողո-
վեսցին առ քեզ, եւ խոյքն Նաբէով-
թայ [7]ածցին եւ՞ մատուսցին ընդունելի
պատարագ ի վերայ սեղանոյ իմոյ, եւ
[8]տուն աղօթից իմոց փառաւորեսցի՞։
8 Ո՞վ են սոքա որ իբրեւ զամպս
թռուցեալ են, եւ իբրեւ զաղաւնիս
[9]ձագախառն երամովքն զան առ իս։
9 Ինձ՞ ակն ունին կղզիք եւ նաւք
Թարսիս յառաջագոյն՝ ածել զորդիս
քո ի հեռաստանէ. [10]զարծաթն եւ
զոսկի՞ ընդ իւրեանս՝ վասն անուան
[11]Տեառն սրբոյն՞, եւ վասն Սրբոյն Իս-
10 րայէլի [12]փառաւորելոյ։ Եւ շինեսցեն
որդիք այլազգեաց զպարիսպս քո, եւ
թագաւորք նոցա ընծայեսցին քեզ. զի
վասն բարկութեան իմոյ հարի զքեզ,
եւ վասն ողորմութեան իմոյ սիրեցի
11 զքեզ։ Եւ բացցին դրունք քո հանապա-
զորդ ի տուէ եւ ի գիշերի, եւ մի՛ փա-
կեսցին, կրել ի քեզ զզօրութիւն ազ-
գաց. եւ զթագաւորս իւրեանց ածիցեն
12 առ քեզ։ Զի ազգք եւ [13]թագաւորք որ
քեզ ոչ ծառայիցեն՝ կորիցեն, եւ ազգքն
13 աւերելով աւերեսցին։ Եւ փառքն Լի-
բանանու առ քեզ եկեսցեն, սոսկիւն
եւ սօսի եւ նոճով եւ մայրիւ՝ առ հա-
սարակ փառաւոր առնել զտեղի սրբու-
թեան իմոյ, եւ զտեղի ոտից իմոց փա-
14 ռաւորեցից։ Եւ եկեսցեն առ քեզ զար-
հուրեալք որդիք նեղչացն քոց [6]եւ զայ-
րացուցչաց՞, եւ երկիր պագցեն հետոց
ոտից քոց՝ ամենեքին որ [14]զարհուրեցու-
ցանէին զքեզ. եւ կոչեսջիր՞ քաղաք
15 Տեառն Սիոն Սրբոյն Իսրայէլի. [15]Վասն
զի եղեր դու լքեալ եւ ատեցեալ, եւ
ոչ ոք էր որ [16]օգնէր քեզ. եւ արարից
զքեզ յուրախութիւն յաւիտենական՞,
16 ցնծութիւն ազգաց յազգս։ Եւ զիեցես
զկաթն հեթանոսաց, եւ [17]զմեծութիւն
թագաւորաց կերիցես՞. եւ ծանիցես թէ
ես եմ Տէր, որ ապրեցուցանեմ եւ փրկ-
17 կեմ զքեզ [18]Աստուած Իսրայէլի՞։ Եւ
փոխանակ պղնձոյն՝ բերից քեզ ոսկի,
եւ փոխանակ երկաթոյն բերից քեզ ար-
ծաթ, եւ փոխանակ փայտի բերից քեզ
պղինձ, եւ փոխանակ քարի տաց քեզ
երկաթ. եւ տաց զիշխանս քո ի խա-
ղաղութիւն եւ [19]զայցելուս քո յարդա-
18 րութիւն։ Եւ ոչ եւս լուիցի անիրաւու-
թիւն յերկրի քում, եւ ոչ բեկումն եւ
թշուառութիւն ի սահմանս քո. այլ կո-
չեսցին Փրկութիւն պարիսպք քո, եւ
19 դրունք քո Ցնծութիւն։ Եւ ոչ եւս
եղիցի քեզ արեգակն ի լոյս տուընջեան,
եւ ոչ ծագումն լուսնի տացէ քեզ լոյս
ի գիշերի. այլ եղիցի քեզ Տէր լոյս
յաւիտենական, եւ փառք քո [20]Աստուած։
20 Ոչ մտցէ քեզ արեգակն, եւ լուսինն ի
քէն՞ մի՛ պակասեսցէ. զի եղիցի քեզ
Տէր լոյս յաւիտենական. եւ կատարես-
21 ցին աւուրք սգոյ քո։ Եւ ժողովուրդ
քո ամենեքին արդար, եւ յաւիտեանս
ժառանգեսցեն զերկիր, [21]պահել զնորա-
տունկ գործոց ձեռաց իւրեանց ի փառս՞։
22 Սակաւաւորն հազարաւոր եղիցի, եւ

[1]Եբր. Հեթանոսք [2]Եբր. Թագաւորք [3]Եբր. տես, ամէնքին ժողվին գան առ քեզ. [4]Եբր ի գիրկս մնանիցին [5]Եբր. եւ երկիցէ եւ ընդարձակեսցի սիրտ քո. զի փոխեսցի ի քեզ յորդութիւն ծովու, զօրութիւն ազգաց եկեսցէ առ քեզ։(6)Ծածկեսցեն զքեզ երամակք ուղտուց, անդրանիկքն ուղտուց [6]Եբր. պակասէ [7]Եբր. ծառայեսցեն քեզ. [8]Եբր. զտուն փառաց իմոց փառաւորեցից [9]Եբր. ի վանդակս իւրեանց։ (9) Զի ինձ [10]Եբր. արծաթ իւրեանց եւ ոսկի իւրեանց [11]Եբր. Տեառն Աստուծոյ քո [12]Եբր. զի փառաւորեաց զքեզ [13]Եբր. Թագաւորութիւնք

[14]Եբր. անարգէին զքեզ. և կոչեսցեն զքեզ [15]Եբր. Փոխանակ [16]Եբր. անցանէր ընդ քեզ. և արարից զքեզ ի փառաւորութիւն յաւիտենից [17]Եբր. զստինս թագաւորաց դիեսցես [18]Եբր. Հզօրն Յակոբայ [19]Եբր. զՀարկահանս [20]Եբր. Աստուած քո։(20)Ոչ եւս մտցէ արեգակն քո, եւ լուսինն քո [21]Եբր. տունկն զոր տնկեցի, գործ ձեռաց իմոց, ի փառաւորել զիս։

*կրտսերն յազգ մեծ. [1]զի ես Տէր ընդ ժա-
մանակս ժամանակս ժողովեցից զնոսա՛՛։*

## Գլ. ԿԱ

1 *Հոգի [2]Տեառն ի վերայ իմ, վասն որոյ
եւ օծ իսկ [3]զիս, աւետարանել աղ-
քատաց առաքեաց զիս, բժշկել զբեկ-
եալս սրտիւք, քարոզել գերեաց զթո-*
2 *ղութիւն եւ [4]կուրաց տեսանել՛՛, Կոչել
ամ Տեառն ընդունելի եւ օր հատուցման
Աստուծոյ մերոյ, մխիթարել զամենայն*
3 *սգաւորս, [5]Տալ սգաւորաց Սիոնի փառս.
փոխանակ մոխրոյն՝ օծումն ուրախու-
թեան, եւ սգաւորացն հանդերձ փառաց՝
փոխանակ ոգւոցն՛՛ վհատութեան, եւ
կոչեսցին նոքա [6]ազգք արդարութեան՝*
4 *տունկ Տեառն ի փառս։ Եւ շինեսցեն
զաւերակս յաւիտենից, եւ զյառաջա-
գոյն աւերեալսն կանգնեսցեն, եւ նորո-
գեսցեն զքաղաքս աւերեալս ազգաց*
5 *մինչեւ յազգս։ Եւ եկեսցեն օտարա-
ծինք, հովիւք խաշանց քոց, եւ այ-
լազգիք մաճակալք եւ այգեգործք քո։*
6 *Բայց դուք՝ քահանայք Տեառն կոչես-
ջիք, պաշտօնեայք Աստուծոյ մերոյ
անուանեսջիք, զզօրութիւն ազգաց կե-
րիջիք, եւ մեծութեամբ նոցա սքանչելի*
7 *լինիջիք։ Փոխանակ ամօթոյ ձերոյ՝
կրկին ուրախութիւն, եւ փոխանակ ա-
նարգանաց [7]ձերոյ՝ ցնծութիւն, եւ ապա
զերկիրն յերկրորդում ժառանգեսցեն,
եւ ուրախութիւն յաւիտենից ի վերայ*
8 *գլխոյ նոցա՛՛։ Զի ես եմ Տէր որ սիրեմ զար-
դարութիւն, եւ ատեամ զյափշտակու-
թիւնս [8]յանիրաւութենէ. եւ տաց զվաս-
տակս նոցա [9]արդարոց, եւ ուխտ յաւի-*
9 *տենից ուխտեցից ընդ նոսա։ Եւ ծանիցի
ի մէջ ազգաց զաւակ նոցա, եւ ծնունդք
նոցա ի մէջ ժողովրդոց. ամենեքին որ
տեսանիցեն՝ ճանաչիցեն զնոսա թէ սոքա
են զաւակ օրհնեալ [10]յԱստուծոյ։*

10 *Ուրախութեամբ ուրախ [11]եղիցին ի
Տէր. ցնծասցէ անձն իմ [12]ի Տէր, զի
զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան եւ
[13]պատմուճան ուրախութեան՛՛, իբրեւ
փեսայի եդ ինձ պսակ, եւ իբրեւ հարսն*
11 *զարդու զարդարեաց զիս։ Եւ իբրեւ
երկիր որ աճեցուցանէ զծաղիկս իւր,
եւ իբրեւ զպարտէզ որ բուսուցանէ
զսերմանիս իւր. այնպէս ծագեսցէ [14]Տէր
զարդարութիւն իւր եւ զցնծութիւն՛՛
առաջի ամենայն ազգաց։*

## Գլ. ԿԲ

1 *Վասն Սիոնի ոչ լռեցից, եւ վասն Ե-
րուսաղեմի ոչ [15]ներեցից. մինչեւ ծա-
գեսցէ իբրեւ զլոյս արդարութիւն նո-
րա, եւ փրկութիւն նորա իբրեւ զփայլակն*
2 *վառեսցի։ Եւ տեսցեն հեթանոսք զարդա-
րութիւն քո, եւ ամենայն թագաւորք
զփառս քո. եւ կոչեսցի քեզ անուն նոր,*
3 *զոր [16]Տէր անուանեսցէ։ Եւ եղիցես պսակ
վայելչութեան ի ձեռին Տեառն, եւ թագ
արքայութեան ի ձեռին Աստուծոյ քո.*
4 *Եւ ոչ եւս կոչեսցիս Լքեալ, եւ երկիրն քո
ոչ եւս կոչեսցի Աւերակ. զի քեզ [17]ա-
նուն կոչեսցին կամք իմ, եւ երկրին
քում շինութիւն բնակութեան՛՛. զի հա-
ճեսցի Տէր ընդ քեզ, եւ երկիրն քո*
5 *[18]խառնեսցի ի բնակութիւն։ Զոր օրինակ
բնակէ՛՛ երիտասարդ ընդ կուսի՝ այն-
պէս [19]բնակեսցեն որդիք քո ի քեզ՛՛. եւ
եղիցի՝ զոր օրինակ ուրախ լինի փեսայ
առ հարսին, այնպէս ուրախ լիցի [20]Տէր
ի քեզ։*
6 *Ի վերայ պարսպացն քոց, Երուսա-
ղէմ, պահապանս կացուցի. զօրն ող-
ջոյն եւ զգիշերն [21]ամենայն, որ մինչեւ*
7 *յանգ մի՛ դադարեսցեն յիշել զՏէր։ Զի
ոչ գոյ նման ձեզ, եթէ ուղղեսցէ եւ
արասցէ զԵրուսաղէմ ի պարծանս ի վե-*
8 *րայ երկրի։ Երդուաւ Տէր ի փառս՛՛*

---

[1] Եբր. ես, Տէր, ի ժամանակի իւրում փութացուցից զայս [2] Եբր. Տեառն Եհովայի [3] Եբր. զիս Տէր [4] Եբր. կապելոց արձակումն ի բանտէ [5] Եբր. Դնել սգաւորաց Սիոնի, տալ նոցա փառս փոխանակ մոխրոյ, օծումն ուրախութեան փոխանակ սգոյ, հանդերձ գովութեան փոխանակ [6] Եբր. Բեւեկնիք [7] Եբր. ցնծութիւն ի մասին իւրեանց. վասն այնորիկ յերկրին իւրեանց կրկին ժառանգեսցեն, ուրախութիւն յաւիտենից եղիցի նոցա [8] Եբր. ընդ անիրաւութեան, կամ, ողջակիզի [9] Եբր. ճշմարտութեամբ [10] Եբր. ի Տեառնէ

[11] Եբր. եղէց [12] Եբր. յԱստուած իմ [13] Եբր. արկ զինեւ պատմուճան արդարութեան [14] Եբր. Տէր Եհովայ զարդարութիւն եւ զգովութիւն [15] Եբր. հանգեայց [16] Եբր. բերան Տեառն [17] Եբր. կոչեսցի Հաճութիւն իմ ի նմա, եւ երկրին քում՝ Ամուսնացեալ [18] Եբր. եղիցի ամուսնացեալ։ (5) Զոր օրինակ ամուսնանայ [19] Եբր. ամուսնասցին որդիք քո ընդ քեզ [20] Եբր. Աստուած քո [21] Եբր. ողջոյն երբեք մի՛ լռեսցեն. որ յիշէք զՏէր՝ մի՛ լիցի լռութիւն ձեզ։ (7) Եւ մի՛ տայցէք լռութիւն նմա, մինչեւ հաստատեսցէ, եւ մինչեւ դիցէ զԵրուսաղէմ ի գովութիւն յերկրի։ (8) Երդուաւ Տէր յաջ

իւր եւ ի զօրութիւն բազկի իւրոյ, ե-
թէ ոչ տաց զցորեան քո [1]եւ զկերա-
կուր ի ձեռս״ թշնամեաց քոց, եւ ոչ
արբցեն որդիք օտարաց զգինի քո յո-
9 րում դու վաստակեցեր։ Այլ որ ամ-
փոփեսցենն կերիցեն զնա՝ եւ օրհնեսցեն
զՏէր, եւ որ ժողովեսցենն զնա՝ արբցեն
ի սրահս սրբութեանց իմոց։
10 [2]Երթայք մտէք ընդ դրունս իմ, կազ-
մեցէք զճանապարհս, հորդեցէք զշա-
ւիղս. գործեցէք ճանապարհ ժողովրդեան
իմոյ, եւ զքարինս ի ճանապարհէ ան-
տի״ ի բաց ընկեցէք. առէք նշան ի հե-
11 թանոսս։ Զի աւասիկ Տէր լսելի արար
մինչեւ ի ծագս երկրի. ասացէք դստեր
Սիոնի. Ահաւասիկ Փրկիչ քո հասեալ
գոյ եւ ունի զվարձս իւր ընդ իւր. եւ
12 գործ իւր առաջի երեսաց իւրոց։ Եւ
կոչեսցէ զնա ժողովուրդ սուրբ՝ փրկեալ
ի Տեառնէ, եւ դու կոչեսցիս Խնդրեալ
քաղաք եւ Ոչ լքեալ։

ԳԼ. ԿԳ

1 Իսկ այս ո՞վ է որ դիմեալ գայ յԵդով-
մայ, կարմրութիւն ձորձոց իւրոց ի Բո-
սորայ, [3]գեղեցիկ պատմուճանաւ եւ
բուռն զօրութեամբ։ Ես խօսիմ զար-
դարութիւն եւ իրաւունս փրկութեան։״
2 Վասն է՞ր կարմիր են ձորձք քո, եւ
հանդերձք իբրեւ հնծանահարի, [4]լիոյ
հնծանի կոխելոյ։״
3 Հնծան հարի միայն, եւ ի հեթանոսաց
ոչ ոք էր ընդ իս. կոխեցի զնոսա սրտ-
մտութեամբ[5] եւ ճմլեցի զնոսա բար-
կութեամբ [6]եւ իջոյցի յերկիր״, եւ զա-
4 մենայն հանդերձս իմ թաթաւեցի. Զի
[7]հասեալ էր ի վերայ նոցա օր հատուց-
ման, եւ ամ փրկութեան״, եկեալ հա-
5 սեալ։ Եւ հայեցայ՝ եւ ոչ ոք էր որ օգ-
նէր, [8]զմտաւ ածի״, եւ ոչ ոք էր որ ի
թիկունս հասանէր. [9]փրկեաց զնոսա
բազուկ իմ, եւ սրտմտութիւն իմ միայն
6 զգեց կալաւ. Կոխեցի զնոսա բարկու-
թեամբ իմով, եւ զենի״ զնոսա սրտմտու-
թեամբ իմով, եւ իջուցի [10]զնոսա յերկիր։
7 Զողորմութիւնս Տեառն յիշեցից. [11]զքա-
ջութիւն Տեառն յաչ արարից, յամե-
նայնի״ զոր հատուցանէ մեզ Տէր [12]Տէր
դատաւոր բարերար տանն Իսրայելի, որ
ածէ ի վերայ մեր״ ըստ ողորմութեան
իւրում եւ ըստ բազում արդարութեան
8 իւրոյ։ Եւ ասաց՝ [13]Եթէ ժողովուրդ իմ
են որդիքն իմ, եւ ոչ անարգեսցեն զիս.
եւ եղեւ նոցա ի փրկութիւն յամենայն
9 նեղութենէ նոցա։ Ոչ պատգամաւոր ոք
եւ ոչ հրեշտակ, այլ ինքնին Տէր״
փրկեաց զնոսա. վասն սիրելոյ զնոսա
եւ խնայելոյ ի նոսա ինքնին փրկեաց
զնոսա, եւ վերացոյց զնոսա եւ բարձ-
րացոյց զամենայն աւուրս յաւիտենից։
10 Բայց նոքա հեստեցին, եւ բարկացու-
ցին զՀոգի նորա Սուրբ. եւ դարձաւ
նոցա Տէր ի թշնամութիւն, ինքնին եւ
11 ընդ նոսա պատերազմ։ Եւ յիշեաց զա-
ւուրսն յաւիտենից, [14]թէ Ո՞ւր է Մով-
սէս եւ ժողովուրդն նորա, որ եհան
յերկրէ զհովիւն״ հօտից. ո՞ւր է որ եդ
12 ի նոսա զՀոգին Սուրբ. Որ [15]վերացոյց
աջով իւրով զՄովսէս, եւ բազուկ փա-
ռաց նորա յաղթահարեաց״ զջուրսն ա-
ռաջի երեսաց նորա, առնել իւր անուն
13 յաւիտենական։ Անցոյց զնոսա ընդ ան-
դունդս որպէս ձի ընդ [16]անապատ,
14 Եւ իբրեւ զկրաստ ինչ ընդ դաշտ. եւ
ոչ վաստակեցին. էջ Հոգի ի Տեառնէ,
եւ առաջնորդեաց նոցա.״ այնպէս ա-
ծեր զժողովուրդն քո առնել քեզ անուն
15 փառաց։ Եւ արդ [17]դարձ յերկնից՝ եւ
տես ի տաճարէ սրբոյ քումմէ եւ ի փա-

[1]Եբր. ի կերակուր [2]Եբր. Անցէք, անցէք ընդ դրունս. հորդեցէք զճանապարհ ժողովրդեանն, հարթեցէք, հարթեցէք զշաւիղս, զքարինս [3]Եբր. զարդարեալ պատմուճանաւ իւրով, փութացեալ յաճախութեամբ զօրութեան իւրոյ.

Ես որ խօսիմ արդարութեամբ՝ մեծ ի փրկել։ [4]Յեբր. պակաս [5]Եբրայեցին յաւելու, իմով, [6]Եբր. իմով. և ցայտեցաւ յարենէ նոցա ի վերայ զգեստուց իմոց [7]Եբր. օր վրէժխնդրութեան էր ի սրտի իմում, եւ ամ փրկելոց իմոց [8]Եբր. եւ զարմացայ

[9]Եբր. եւ փրկութիւն եղեւ ինձ բազուկ իմ, եւ սրտմտութիւն իմ եղեւ ինձ ձեռնտու։ (6) Եւ կոխեցի զժողովուրդս բարկութեամբ իմով. եւ արբեցուցի [10]Եբր. զարիւն նոցա [11]Եբր. զողորմութիւնս Տեառն ըստ ամենայնի [12]Եբր. եւ ըստ յաճախութեան երախտեաց առ տունն Իսրայելի, զոր հատոյց նոցա [13]Եբր. Արդարեւ ժողովուրդ իմ են նոքա, որդիք որ ոչ ստեն, եւ եղեւ նոցա փրկիչ։ (9) Յամենայն նեղութեան նոցա՝ նեղութիւն նմա, եւ հրեշտակ երեսաց նորա [14]Եբր. զՄովսէս, զժողովուրդ նորա. Ո՞ւր է որ եհան զնոսա ի ծովէ, հովիւն [15]Եբր. եւ զնալ բազկի փառաց իւրոց յաջմէ Մովսէսի, ճեղքեաց [16]Եբր. անապատ, ոչ գլորեցան.(14)Որպէս զրաստ ի հովիտ իջանէ, (Ոգի Տեառն հանգոյց զնոսա,) [17]Եբր. հայեաց

ռաց քոց. ո՞ւր է նախանձ քո եւ զօ-
րութիւն. ¹ո՞ւր է՝՝ բազում ողորմու-
թիւն գթութեան ²քո, որով ներէիր
16 մեզ՝՝։ Զի դու ես մեր Հայր. զի Աբ-
րահամ ոչ գիտաց զմեզ, եւ Իսրայէլ ոչ
ծանեաւ զմեզ. այլ դու, Տէր, Հայր մեր,
³փրկեա զմեզ, զի ի սկզբանէ անուն
17 քո է ի վերայ մեր՝՝։ Զմէ՞ մոլորեցու-
ցեր զմեզ, Տէր, ի ճանապարհաց քոց.
խստացուցեր զսիրտ մեր չերկնչել ի քէն.
դարձ վասն ծառայից քոց, դարձ վասն
18 ազգաց ժառանգութեան քո։ ⁴Գուցէ
ոչ ժառանգիցեմք զլերան սրբութեան քո.
հակառակորդք մեր նեղիցեն զմեզ, եւ՝՝
19 կոխեսցեն զսրբութիւն քո։ Եղաք իբ-
րեւ զառաջինն՝ յորժամ ոչն տիրէիր մեզ,
եւ ոչ կոչեցեալ էր անուն քո ի վերայ
մեր։

ԳԼ. ԿԴ

1 ⁵Եթէ բացցես զերկինս՝ զդողումն կալ-
ցի ի քէն զլերինս, եւ հալեսցին իբրեւ
2 զմոմ առաջի հրոյ. Եւ այրեսցէ հուր
զհակառակորդս քո, եւ յայտնի լիցի
անուն քո ընդդիմակացաց քոց, եւ յե-
3 րեսաց քոց հեթանոսք խռովեսցին։ Յոր-
ժամ առնիցես փառաւորութիւնս՝ դո-
4 ղումն կալցի ի քէն զլերինս։ Յաւիտե-
նից ոչ լուաք, եւ ոչ աչք մեր տեսին
այլ Աստուած բաց ի քէն. եւ զգործս
քո զոր արասցես այնոցիկ որ ակն ու-
5 նիցին ողորմութեան քում։ Զի ընդ ա-
ռաջ լիցի այնոցիկ որք առնեն զիրա-
ւունս, եւ զճանապարհս քո յիշեսցեն.
արդ ահա դու բարկացար եւ մեք մե-
6 ղաք, վասն այնորիկ մոլորեցաք՝՝։ Եւ
եղաք իբրեւ զպիղծս ամենեքեան, իբ-
րեւ զհանդերձս ապարահից ամենայն
արդարութիւն մեր. եւ թօթափեցաք
իբրեւ զտերեւ ամենեքին ⁶մեք վասն
անօրէնութեանց մերոց, հողմք մերժե-
7 ցին զմեզ՝՝։ Եւ ոչ ոք իցէ որ կարդաս-
ցէ զանուն քո, ⁷եւ ոչ որ յիշիցէ ա-
պաստան առնել զքեզ՝՝. զի դարձուցեր
զերեսս քո ի մէնջ, եւ ⁸մատնեցեր զմեզ
8 վասն մեղաց մերոց։ Եւ արդ, Տէր,
Հայր մեր դու ես. մեք կաւ, եւ դու
Ստեղծիչ մեր, եւ գործք ձեռաց քոց
9 ամենեքին մեք. Մի՛ բարկանար մեզ
Տէր, յոյժ, եւ մի՛ ⁹ի ժամանակի յիշեր
զմեղս մեր. եւ արդ հայեաց, Տէր, զի ժո-
10 ղովուրդ քո ¹⁰ամենայն եւ քաղաք սրբու-
թեան քո Սիոն եղեւ աւերակ. իբրեւ
զանապատ եղեւ Երուսաղէմ, յանէծս
11 մատնեցաւ. Տունն սրբութեան մերոյ,
եւ փառքն զոր օրհնեցին հարքն մեր՝
եղեն՝՝ հրձիգ, եւ ամենայն փառաւո-
12 րութիւն մեր կործանեցաւ։ Եւ ի վե-
րայ ամենայնի այսորիկ անսա՞ս, Տէր,
եւ լռեցեր եւ խոնա՞րհ արարեր զմեզ
մինչեւ յոյժ։

ԳԼ. ԿԵ

1 ¹¹Յայտնի եղէ այնոցիկ՝՝ որ զինէն ոչ
հարցանէին, գտայ այնոցիկ որ զիս ոչ
խնդրէին. ասացի՝ Աւասիկ ¹²եմ, ցազգն
2 ցայն որ զանուն իմ ոչ կարդացին։ Զօր
հանապազ ձգեցի զձեռն իմ առ ժողո-
վուրդն անհաւան ¹եւ հակառակող՝՝, որ
գնային զճանապարհ որ ոչ էր բարւոք,
3 այլ զհետ ¹³մեղացն իւրեանց։ Ժողո-
վուրդս այս որ բարկացուցանէր զիս ա-
ռաջի իմ հանապազ. զոհէին ի պար-
տէզս իւրեանց, եւ արկանէին խունկս
¹⁴յաղիւսս իւրեանց դիւացն՝ որք չէին
4 ի յիշատակս իւրեանց։ Եւ՝՝ յայրս կող-
մանեալ ննջէին ¹վասն երազ տեսանե-
լոյ՝՝. որք ուտէին զխոզենիսն եւ զար-
գանակ ¹⁵զոհիցն, եւ ամենայն անօթք
5 նոցա պղծեալ էին՝՝. Որք ասէին՝ Ի բաց

¹Յ Եբր. [illegible] ²Եբր. քո առ իս արգելա՞ւ ³Եբր. Փրկիչ մեր ի յաւիտենից անուն քո ⁴Եբր. Առ փոքր մի ժառանգեաց զնա ժողովուրդ քո սուրբ. հակառակորդք մեր ⁵Եբր. Եղէ թէ ճեղքէիր զերկինս, իջանէիր, յերեսաց քոց լերինք սասանէին՝ (2) Որպէս այրելոյ հրոյ զխռիւս, հրոյ՝ որ եռացուցանէ զջուր, ի յայտնել զանուն քո թշնամեաց քոց. յերեսաց քոց ազգք զարհուրեսցին։ (3) Ի գործել քո զարմանալիս որում ոչ ակն ունէաք, իջեր, յերեսաց քոց լերինք սասանեցան։ (4) Զի ի յաւիտենից ոչ լուան, եւ ոչ զգացին ականջօք. ակն ոչ ետես Աստուած բաց ի քէն, որ գործէ վասն որոց սպասեն նմա։ (5) Օգնես որում ուրախն է, եւ առնէ արդարութիւն, ի ճանապարհս քո յիշէ զքեզ։ ահա բարկացար, զի մեղաք. յաճախեցաք ի նոսա, եւ փրկեսցուք։

⁶Եբր. մեք. և անօրէնութիւնք մեր իբրեւ զհողմ վարեցին զմեզ ⁷Եբր. որ զարթուցեալ բուռն հարցէ զքէն ⁸Եբր. հաչեցեր ⁹Եբր. հանապազ ¹⁰Եբր. ամենեքին մեք.(10) Քաղաքք սրբութեան քո եղեն անապատ. Սիոն անապատ եղեւ, Երուսաղէմ աւերակ. (11) Տուն սրբութեան մերոյ եւ փառաց մերոց ուր գովեցին զքեզ հարք մեր՝ եղեւ ¹¹Եբր. Խնդրեցայ յայնցանէ ¹²Եբր. եմ, աւասիկ եմ. ¹³Եբր. խորհրդոց ¹⁴Եբր. յաղիւսեայս։ (4) Որ նստէին ի գերեզմանս, եւ ¹⁶Եբր. պղծութեան յամանս իւրեանց

կաց յինէն , մի՛ մերձենար յիս զի սուրբ
[1]եմ ։ Այս է ծուխ բարկութեան իմոյ՝
յորում հուր բորբոքեալ է զամենայն ա-
6 ւուրս ։ Ահաւասիկ գրեալ է առաջի իմ .
ոչ լռեցից՝ մինչեւ [2]հատուցից ի ծոցս
7 նոցա [3]Զմեղս նոցա եւ զմեղս հարց
նոցա՛՛ ի միասին , ասէ Տէր , որք ար-
կանէին խունկս ի վերայ լերանց , եւ ի
վերայ բլրոց ուր նախատէինն զիս .
հատուցից զգործս նոցա [4]յառաջագոյն
ի ծոցս նոցա ։
8 Այսպէս ասէ Տէր . Զոր օրինակ եթէ
գտանիցի [5]ճիռ ի մէջ ողկուզոյ՛՛, եւ ա-
սիցեն , Մի՛ ապականեր զդա՝ զի օրհ-
նութիւն [6]Տեառն գոյ ի դմա . այնպէս
արարից վասն ծառայից իմոց , [7]վասն
9 որոյ ոչ կորուսից զամենեսեան ։ Եւ հա-
նից զզաւակ Յակոբայ եւ Յուդայ , եւ
ժառանգեսցեն զլեառն սրբութեան ի-
մոյ՛՛, եւ ժառանգեսցեն ընտրեալք իմ,
10 եւ ծառայք իմ բնակեսցեն ի նմա ։ Եւ
[8]եղիցին յանտառին մակաղատեղ հօ-
տից՛՛, եւ ձորն Աքովրայ հանգիստ
անդէոց ժողովրդեան իմոյ որ խնդրե-
11 ցինն զիս ։ Այլ դուք թողէք [9]զիս եւ
մոռացարուք զլեառն սրբութեան ի-
մոյ , եւ կազմէիք [10]դիւաց սեղան եւ
12 խառնէիք խառնելիս [11]բախտից. Ես մատ-
նեցից զձեզ ի սուր , եւ ամենեքեան
[12]կոտորեսջիք . զի կոչեցի զձեզ՝ եւ ոչ
լուարուք . խօսեցայ՝ եւ ստանգանե-
ցէք , եւ արարէք չար առաջի իմ , եւ
13 զոր ոչ կամէի՝ ընտրեցէք ։ Վասն այ-
սորիկ այսպէս ասէ [13]Տէր . Ահաւասիկ
որ ծառայեննն ինձ՝ կերիցեն , եւ դուք
քաղցիջիք . ահաւասիկ որ ծառայեննն
ինձ՝ արբցեն , եւ դուք ծարաւեսջիք .
ահաւասիկ որ ծառայեննն ինձ՝ ուրախ
14 լիցին, եւ դուք ամաչեսջիք . Ահաւասիկ
որ ծառայեննն ինձ՝ ցնծասցեն ուրախու-
թեամբ սրտից , եւ դուք աղաղակե-
ջիք առ ցաւս սրտից ձերոց , եւ առ
15 բեկումն ոգւոց ձերոց ողբասջիք ։ Զի

[1]Եբր. եմ քան զքեզ [2]Եբր. հատուցից, եւ հա-
տուցից [3]Եբր. Զմեղս ձեր եւ զմեղս հարցն
ձերոց [4]Եբր. զառաջինս [5]Եբր. թագցու յող-
կուզի [6]ՅԵբր. պակաս [7]Եբր. զի մի կորուսից
զամենեսեան ։ (9) Եւ յարուցից զաւակ ի Յա-
կոբայ , և ի Յուդայէ՝ որ ժառանգեսցէ զլերինս
իմ [8]Եբր. եղիցի Սարոնն մակաղատեղ խաշանց
[9]Եբր. զՏէր [10]Եբր. Գադայ (Բախտին) [11]Եբր.
Ճակատագրին [12]Եբր. կորասջիք ի խողխողումն
[13]Եբր. Ադոնայի Տէր

թողջիք զանուն ձեր [14]ի յագուրդ ըն-
տրելոց իմոց , եւ զձեզ [13]Տէր սատակես-
ցէ . եւ ծառայիցն [15]իմոց կոչեսցի ա-
16 նուն նոր՛՛, Որ օրհնեսցի ի վերայ երկ-
րի , [16]զի օրհնեսցեն զԱստուած՛՛ ճշմա-
րիտ . եւ որ երդնուցուն ի վերայ երկ-
րի՝ երդուիցին յԱստուած ճշմարիտ . զի
[17]մոռասցին զնեղութիւնս առաջինս, եւ
17 ոչ եւս անկցի ի սիրտս նոցա ։ Զի ե-
ղիցին երկինք՛՛ նոր եւ երկիր նոր , եւ
ոչ եւս յիշեսցեն զառաջինսն . եւ ոչ եւս
18 անկցի ի սիրտս նոցա . [18]Այլ ուրախու-
թիւն եւ ցնծութիւն գտցեն ի նմա , զոր
ես հաստատեցից՛՛. զի ահաւասիկ ես
առնեմ զԵրուսաղէմ ցնծութիւն , եւ
19 զժողովուրդ [19]իմ ուրախութիւն ։ Եւ
ցնծացայց ի վերայ Երուսաղեմի , եւ ու-
րախ եղէց ի վերայ ժողովրդեան իմոյ ,
եւ ոչ եւս լուիցի ի նմա ձայն լալոյ եւ
20 ձայն գուժի ։ Եւ մի՛ լիցի անդ տարա-
ժամ աւուրց , եւ ծեր՝ որոյ ոչ իցէ լցեալ
զժամանակս իւր . զի [20]եղիցի կրտսեր
որդին՝ հարիւրամեան , եւ որ հարիւրե-
մեանն մեռանիցի՝ մեղաւոր եւ անիծեալ
21 կոչեսցի՛՛ ։ Շինեսցեն տունս եւ ինքեանք
բնակեսցեն , տնկեսցեն այգիս՝ եւ ին-
22 քեանք կերիցեն զպտուղ նոցա ։ Եւ մի՛
եւս նոքա շինեսցեն՝ եւ այլք բնակես-
ցեն , եւ նոքա տնկեսցեն՝ եւ այլք կե-
րիցեն . ըստ աւուրց փայտին կենաց ե-
ղիցին աւուրք ժողովրդեան իմոյ, [21]գործք
23 ձեռաց նոցա հնասցին։ Եւ ընտրեալք իմ
մի՛՛ եւս վաստակեսցեն ընդունայն , եւ
ոչ եւս ծնանիցին որդիս յանէծս , զի
զաւակ օրհնեալ են [22]յԱստուծոյ՝ եւ
24 ծնունդք նոցա ընդ նոսա ։ Եւ եղիցի՝
մինչչեւ կարդացեալ իցէ նոցա՝ [23]ես
լուայց նոցա, եւ մինչդեռ խօսիցին , ա-
25 սացից՝ թէ Զի՞նչ խնդրէք՛՛ ։ Յայնժամ ժա-
մանակի գայլք եւ գառինք ի միասին
ճարակեսցին , եւ առեւծ իբրեւ զեզն

[14]Եբր. յերդումն [15]Եբր. իւրոց կոչեսցէ այլ անուն
[16]Եբր. օրհնեսցի յԱստուած [17]Եբր. ի մոռացօնս
եղեն նեղութիւնք առաջինք եւ ծածկեցան
յաչաց իմոց ։ (17) Զի ահաւասիկ ես առնեմ
երկինս [18]Եբր. Վասն այսորիկ ուրախ լերուք
եւ ցնծացէք հանապազ ընդ որ եսն առնեմ
[19]Եբր. նորա [20]Եբր. մեռցի մանուկն՝ որդի
հարիւրեմեան , եւ մեղաւորն որդի հարիւրեմ-
եան՝ անիծեալ լիցի [21]Եբր. եւ զգործս ձե-
ռացն իւրեանց հնացուսցեն ընտրեալք իմ։(23)Մի՛
[22]Եբր. Տեառն [23]Եբր. տաց պատասխանի ,
եւ մինչդեռ խօսիցին, լուայց

յարդ կերիցէ, եւ օձ զհող իբրեւ զհաց
կերիցէ. մի՛ մեղիցեն եւ մի՛ վնասես-
ցեն ի լերին սրբութեան իմոյ, ասէ Տէր։

## ԳԼ. ԿԶ

1 Այսպէս ասէ Տէր. Երկինք աթոռ իմ
են, եւ երկիր պատուանդան ոտից ի-
մոց. որպիսի՞ տուն շինիցէք ինձ, ասէ
Տէր, կամ որպիսի՞ ինչ իցէ այն տեղի
2 հանգստեան իմոյ. Զի զայս ամենայն
ձեռն իմ արար, եւ [1]իմ է" ամենայն,
ասէ Տէր. եւ ես յո՞ հայեցայց, եթէ ոչ
ի հեզս եւ ի խոնարհս, եւ որ դողայ ի
բանից իմոց։
3 Բայց [2]անօրէնն որ մատուցանէ ինձ
եզն պատարագ՝ այնպէս է, որպէս թէ
հարկանիցէ ոք զկառափն մարդոյ. եւ
որ մատուցանէ զոչխար պատարագ՝ այն-
պէս է, որպէս թէ զշուն ոք մորթիցէ.
եւ որ մատուցանէ ոք նաշիհ՝ այնպէս
է, որպէս թէ հեղուցու ոք զարիւն
խոզի. եւ որ տայցէ զկնդրուկն ի
խունկս յիշատակաց՝ այնպէս է, որպէս
զհայհոյիչն. եւ նոքեանք ընտրեցին
զճանապարհս իւրեանց, եւ զգարշե-
լիս իւրեանց զոր անձինք իւրեանց
4 ախորժեցին։ Եւ ես առից ի ձեռն
[3]զխաբէութիւնս նոցա, եւ [4]ըստ մե-
ղաց նոցա հատուցից նոցա". զի կո-
չեցի զնոսա՝ եւ ոչ լուան ինձ, խօ-
սեցայ՝ եւ ոչ անսացին. եւ արարին
չար առաջի իմ, եւ զոր ոչն կամէի
ընտրեցին։
5 Լուարուք զպատգամս Տեառն որ դո-
ղայք ի բանից նորա. [5]խօսեցարուք,
եղբարք մեր, ընդ ատելիս ձեր եւ ընդ
գարշեցուցիչս. զի անուն Տեառն
փառաւորեսցի", եւ երեւեսցի յուրա-
խութեանն ձերում. եւ նոքա ամաչես-
ցեն։
6 Ձայն բարբառոյ ի քաղաքէ, ձայն ի
տաճարէ, ձայն Տեառն որ հատուցանէ
7 զհատուցումն [6]հակառակորդաց։ Մինչ-
չեւ իցէ յղւոյն ծնեալ", եւ մինչչեւ
հասեալ իցեն ցաւք երկանց, [2]ապրե-
8 ցաւ եւ" ծնաւ արու։ Ո՞ լուաւ, ո՞ ե-
տես այսպիսի ինչ, եթէ երկնեաց երկիր
ի միում աւուր, եւ ծնաւ ազգ մի ողջոյն
միանգամայն. զի երկնեաց Սիոն եւ ծնաւ
9 զմանկունս իւր։ Ես [7]ետու քեզ զյոյս
զայդ, եւ դու ոչ յիշեցեր զիս, ասէ Տէր.
ո՞չ ապաքէն զամուլն եւ զծննդականն
10 ես արարի", ասէ Աստուած քո։ Ուրախ
[8]լեր, Երուսաղէմ, եւ ժողովեցարուք
առնել տօն ի դմա". ամենեքեան որք սի-
րէք զդա, խնդացէք եւ ուրախ լերուք
ի միասին որ նստիք ի սուգ վասն դո-
11 րա. Զի դիեցէք եւ յագիցիք ի ստեանց
մխիթարութեան դորա, եւ կշտապինդ
վայելիցէք [9]ի զալստենէ փառաց դորա։
12 Զի այսպէս ասէ Տէր. Ահաւասիկ ես
դարձուցանեմ ի դոսա իբրեւ զգետ զխա-
ղաղութիւն, եւ իբրեւ զհեղեղատ յոր-
դեալ՝ զփառս հեթանոսաց. [10]զմանկունս
դոցա ի վերայ ուսոց իւրեանց բարձեալ
բերիցեն, եւ ի վերայ ծնգաց իւրեանց
13 գգուեսցեն"։ Որպէս մայր զմանուկ իւր
[11]գգուիցէ, այնպէս գգուեսցից" զձեզ.
14 եւ յԵրուսաղէմ մխիթարեսջիք։ Եւ
տեսջիք եւ խնդասցէ սիրտ ձեր, եւ
ոսկերք ձեր իբրեւ զդալարի զուարճաս-
ցին. եւ ծանիցի ձեռն Տեառն երկիւ-
ղածաց իւրոց, եւ սպառնասցի [12]անհա-
15 ւատից։ Զի ահաւասիկ Տէր իբրեւ
զհուր եկեսցէ, եւ կառք նորա իբրեւ
զմրրիկ. հատուցանել սրտմտութեամբ
[13]զհատուցումն իւր, եւ բոցով հրոյ [14]զսար-
16 համարհանս իւր։ Զի ի հուր [15]Տեառն
դատեսցի երկիր ամենայն, եւ ի սուր
նորա ամենայն մարմին." բազումք ե-
ղիցին վիրաւորք ի Տեառնէ։
17 Որ սրբինն եւ մաքրին ի պարտէզս
[16]եւ ի սրահս իւրեանց", որ ուտեն միս
խոզենի եւ զգարշելիսն եւ զմուկնն, ի
միասին սատակեսցին նոքա, ասէ Տէր։
18 Եւ ես զգործս նոցա եւ զխորհուրդս նո-
ցա գիտեմ. գամ ժողովել զամենայն
ազգս եւ զլեզուս. եկեսցեն եւ տեսցեն

---

[1] Եբր. եղեւ այս [2] Յեբր. պոխոէ [3] Կամ, զաղէտս [4] Եբր. զերկեւղ նոցա ածից ի նոսա [5] Եբր. ասացին եղբարք ձեր որ ատեան զձեզ, որ մերժեն զձեզ վասն անուան իմոյ, Փառաւորեսցի Տէր [6] Եբր. հակառակորդաց իւրոց։ (7) Մինչչեւ յերկունս լեալ՝ ծնաւ

[7] Եբր. որ տամ երկնել, ո՞չ տաց ծնանել, ասէ Տէր. ես որ տամ ծնանել, փակիցե՞մ [illegible] [8] Եբր. լերուք ընդ Երուսաղէմի, եւ ցնծացէք ի նմա [9] Եբր. ի պայծառութենէ [10] Եբր. դիեսջիք, ի վերայ գրկաց բարձջիք, եւ ի վերայ ծնգաց գգուեսջիք [11] Եբր. մխիթարիցէ, այնպէս մխիթարեցից [12] Եբր. թշնամեաց իւրոց [13] Եբր. զբարկութիւն [14] Եբր. զսպառնալիս [15] Եբր. Տէր դատեսցի, եւ ի սուր՝ զամենայն մարմին, եւ [16] Եբր. զկնի միոյն որ ի միջի

19 զփառս իմ։ Եւ թողից ի վերայ նոցա
նշան, եւ առաքեցից ի նոցանէ փրկեալս
յազգս, ի Թարսիս եւ ի Փուդ եւ ի Ղուդ
[1]եւ ի Մոսոք" եւ ի Թոբէլ, եւ [2]յԵլլադա
եւ ի կղզիս հեռաւորս որոց չիցէ լուեալ
զանուն իմ, եւ ոչ տեսեալ զփառս
իմ. եւ պատմեսցեն զփառս իմ [3]եւ զա-
20 նուն իմ" ի մէջ ազգաց։ Եւ ածցեն
[4]զեղբարս իւրեանց" յամենայն ազգաց
պատարագ Տեառն, [5]հեծեալս կառօք
հանդերձ պալարակապ երիվարօք հովա-
նեօք ի սուրբ քաղաքն Երուսաղէմ",
ասէ Տէր, որպէս մատուցին ինձ որ-
դիքն Իսրայելի զպատարագս իւրեանց

21 [6]սաղմոսիւք ի տուն Տեառն։ Եւ" ի նո-
ցանէ առից ինձ ի քահանայս եւ ի Ղեւ-
22 տացիս, ասէ Տէր։ Զոր օրինակ երկինք
նոր եւ երկիր նոր, զոր ես առնեմ կալ
առաջի իմ, ասէ Տէր, նոյնպէս կացցէ
23 զաւակն ձեր[7]։ Եւ եղիցի՝ ամիս յամսոյ
եւ շաբաթ ի շաբաթէ՝ եկեսցէ ամենայն
մարմին երկիր պագանել առաջի իմ [8]յԵ-
24 րուսաղէմ, ասէ Տէր Աստուած"։ Եւ
ելցեն եւ տեսցեն [9]զոսկերս մարդկան
առ իս յանցուցելոց, զի որդն նոցա ոչ
վախճանեսցի, եւ հուր նոցա ոչ շիջ-
ցի, եւ եղիցին [10]ի տեսիլ ամենայն մսե-
ղեաց։

---

[1] Եբր. յաղեղնաւորս [2] Եբր. ի Յաւան [3] Եբր. զփառս իմ [4] Եբր. զամենայն եղբարս ձեր [5] Եբր. յերիվարս եւ ի կառս եւ ի լկտիս եւ ի ջորիս եւ ի գրաստս երագունս ի լեառն սրբութեան իմոյ յԵրուսաղէմ

[6] Եբր. յամանս սուրբս ի տուն Տեառն։(21) Նա եւ [7] Եբր. զաւակն ձեր, եւ անուն ձեր [8] Եբր. ասէ Տէր [9] Եբր. զդիակունս [10] Եբր. ի գարշանս

# ԳԼՈՒԽՔ ԵՐԵՄԵԱՑ ՄԱՐԳԱՐԷԻ

Գլ. Համ.

մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, անձամբ անձանց իւրեանց եղեն պատճառ չարեաց որ հասին նոցա ։ ԺԸ. 7

Որ ի նմանէն գովութիւնք Հրէիցն՝ ասէ մարգարէն, եւ յուսայ զնոսա, զի չարիս փոխանակ բարեաց հատուցին ։ ԺԸ. 13

Հրաման առնու Երեմիա զկուժ կաւեղէն առնուլ, եւ վկայել զչարեաց ժողովրդեանն. և բեկանել զկուժն առաջի ալաց նոցա, եւ ասել՝ թէ Այսպէս խորտակեսցի Երուսաղէմ։ Եմուտ ի Պասքովրայ յանձնեալ արգել. Եւ եւ մարգարէանայ Պասքովրայ զչարիսն որ հասանելոց էին նմա ։ Արտասուէ լինի մարգարէն բամբասանացն, եւ լուտայ վասն նոցա. եւ անիծանէ զօր ծննդեան իւրոյ ։ ԺԹ. 1

Առաքէ Սեդեկիա արքայ ուսանել յԵրեմիայէ՝ թէ անցանիցէ՞ զնովաւ Նաբուքոդոնոսոր. եւ նա ասէ, թէ Աստուած տայ պատերազմ ընդ Հրեայս և ընդ Սեդեկիայ արքայի. բայց եթէ կամեսցի ժողովուրդ կամօք ձեռս տալ ի Նաբուքոդոնոսոր, ապրեցուսցէ զանձն իւր. և թագաւորն չկործանիցի եթէ հեռանայցէ ի չարեացն իւրոց, և Աստուծոյ հրամանացն անսալ կամիցի. և թէ չառնուցու յանձն՝ կորիցէ ։ ԻԱ. 1

Ընդդէմ Յովակիմայ եւ Յեքոնիայ, եւ այլոց հովուացն ։ ԻԲ. 10

Մարգարէութիւն զՏեառնէ, եւ զատոց մարգարէից ամբաստանութիւն ։ ԻԳ. 5

Դիւրութիւն Յուդայ մարգարէանայ, հեշտութիւնս մնացելոց ժողովրդեանն Երուսաղեմի՝ հանդերձ Սեդեկիայ չարիս՝ թզոյն օրինակաւ ։ ԻԴ. 1

Մարգարէանայ զելանելն Նաբուքոդոնոսորայ եւ ամենայն հեթանոսաց կորուստ գուշակէ բաժակաւն ։ ԻԵ. 1

Յառաջագոյն ասէ զկորուստն Երուսաղեմի, եւ ըմբռնի Երեմիա ի քահանայիցն, եւ զերծանի ի վտանգէն ։ ԻԵ. 32

Հրաման առնու մարգարէն արկանել անուր ի պարանոց իւր, եւ ասել ցհրեշտակս այլազգեացն, Պատմեցէք թագաւորին ձերոյ լինել հնազանդ Նաբուքոդոնոսորայ. քանզի մահ սպառնայ Աստուած այնոցիկ որ ոչ հնազանդին նմա. զնոյն խրատ տայ եւ Սեդեկիայ եւ ժողովրդեանն եւ քահանայիցն ։ Իսկ սուտ մարգարէ Անանիա՝ հակառակ Երեմիայի մարգարէի, Անօթք քահանայութեանն, ասէ, այսրէն դառնալոց են, եւ Յեքոնիա որդի Յովակիմայ՝ եղբօրորդի Սեդեկիայ. եւ խորտակեաց զանուր մարգարէին. առաքի այնուհետեւ Երեմիա մահ գուշակել նմա ի նմին տարւոջ. որ եւ եղեւ իսկ ։ ԻԷ. 1

Զարիս սուտ մարգարէիցն որ ի Բաբելոն էին մարգարէանայ յառաջագոյն, եւ ժողովրդեանն ընդ երկար ժամանակս գերութեան. բայց սակայն թէ լինելոց է դարձ ի Տեառնէ. եւ ընդ այն բարկանայր Սամեա, եւ սաստէր քահանային, թէ ընդէ՞ր ոչ արգելու զԵրեմիա յայնպիսի մարգարէութենէ. եւ վասն այնորիկ սպառնայ Աստուած նմա կորուստ ։ ԻԹ. 1

Ապա եւ պատգամ մխիթարութեան Իսրայէլի գուշակէ, և զժամանակն յոր ելանելոց էին ի Բաբելոնէ, այն էր պասեքն, որ եւ յԵզր իսկ է գտանել. Եթէ ի տօնի բաղարջակերացն ելին, ապա ուրեմն յայտ յանդիմանին Հրեայքն սուտք. զի որում յայսմ վայրի բարութիւն գրեալ է լինել նոցա, տակաւին ակն ունին, եւ այն անց եւ կատարեցաւ ։ Լ. 1

Վասն մանկտւոյն որ ի Հերովդէէ կոտորեալ էին ։ ԼԱ. 15

Վասն նորոյ ուխտին մարգարէութիւն, եւ որ յայսմ վայրի շինութիւն գրեալ է քաղաքին՝ այնմ տակաւին ակն ունին Հրեայք, և այն վախճան առ յորժամ ելինն ի Բաբելոնէ ։ ԼԱ. 21

Հրաման առնու Երեմիա գնել զագարակն հօրեղբօրն իւրոյ. գնեաց և ասէ, Քաղդէս մատնեցաւ եւ հրամայես գնել ագարա՞կ ։ Իսկ Աստուած ասէ ցնա, Զարիք որ հասին վասն մեղաց ժողովրդեանդ են. բայց եղիցի ժամանակ յորժամ դարձեալ բնակեսցէ քաղաքդ ։ ԼԲ. 1

Կանխաւ գուշակէ Սեդեկիայ թէ ըմբռնելոց է, և պատուհասէ զայնոսիկ որք զծառայսն ազատեցին, և դարձեալ արկին ի ծառայութիւն, եւ սպառնայ թէ մեծամեծ չարիք հասանելոց են նոցա. վասն այնորիկ հրաման տայ որդւոցն Յովնադաբայ ըմպել գինի, եւ նոքա չունէին յանձին ։ ԼԳ. 1

Հրաման առնու Երեմիա գրել զոր ինչ մարգարէանայ ի վերայ Իսրայելի. զի գոնէ յայնժամ երկնչիցին, յորժամ լսիցեն թէ չարիք ի վերայ հասանելոց են նոցա. եւ նա պատուիրեաց Բարուքայ գրել. գրեաց և ընթերցաւ առաջի Հրէիցն. իբրեւ լուան իշխանքն՝ պատմեցին Յովակիմայ արքայի, եւ նա առ զգիրն, կարեաց եւ այրեաց ։ Հրաման առ Երեմիա այլ գիր զնոյն օրինակ գրել, եւ մարգարէանայ թագաւորին չարիս վասն յանդգնութեանն ։ ԼԶ. 1

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ԵՐԵՄԵԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 ՊԱՏԳԱՄՆ [1]Աստուծոյ, որ եղեւ
ի վերայ՟ Երեմիայի Քեղկեայ, ի
քահանայից անտի՛ որ [1]բնակեալ էր՟ յԱ-
2 նաթովթ յերկրին Բենիամենի։ Առ որ ե-
ղեւ բան Տեառն յաւուրս Յովսեայ որդ-
ւոյ Ամոնայ արքայի Հրէաստանի, յե-
րեքտասաներորդի ամի թագաւորու-
3 թեան նորա։ Եւ եղեւ յաւուրս Յովա-
կիմայ որդւոյ Յովսեայ արքայի Հրէաս-
տանի, մինչեւ ի վախճան մետասանե-
րորդի ամին Սեդեկեայ որդւոյ Յովսեայ
արքայի Յուդայ՝ ցգերութիւնն Երու-
սաղեմի, յամսեանն հինգերորդի։
4 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ա-
5 սէ, Մինչչեւ ստեղծեալ էր զքեզ յո-
րովայնի՛ գիտեմ զքեզ, եւ մինչչեւ ե-
լեալ էիր յարգանդէ՛ սրբեցի զքեզ, մար-
6 գարէ ի հեթանոսս եդի զքեզ։ Եւ ա-
սեմ, [2]Ով եսդ Տէր՟ Տէր, ահաւասիկ
խօսել իսկ ոչ գիտեմ, զի մանուկ եմ
7 ես։ Եւ ասէ ցիս Տէր, Մի՛ ասեր եթէ
մանուկ եմ ես. զի առ ամենեսեան առ
որս առաքեցից զքեզ՝ երթիցես. եւ ըստ
ամենայնի զոր միանգամ պատուիրեցից
8 քեզ՝ խօսեսցիս։ Մի՛ երկիցես յերեսաց
նոցա. զի ընդ քեզ եմ ի փրկել զքեզ,
ասէ Տէր։
9 Եւ ձգեաց Տէր զձեռն իւր առ իս եւ
մերձեցոյց ի բերան իմ, եւ ասէ ցիս,
10 Ահա ետու զբանս իմ ի բերան քո. Ա-
հա կացուցի զքեզ այսօր ի վերայ ազ-
գաց եւ թագաւորութեանց խլել եւ
բրել, կորուսանել եւ յատակել, շինել
եւ տնկել։
11 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
Զի՞նչ տեսանես, Երեմիա։ Եւ ասեմ,
12 Գաւազան [3]ընկուզի տեսանեմ ես։ Եւ
ասէ ցիս Տէր, Բարւոք տեսանես. զի
զարթուցեալ եմ ես ի բանս իմ առնել
զնոսա։
13 Եւ եղեւ բան Տեառն առ իս կրկին
անգամ եւ ասէ, Զի՞նչ տեսանես։ Եւ
ասեմ, Կաթսայ յեռանդան տեսանեմ ես,
14 եւ երեսք նորա յերեսաց հիւսիսոյ։ Եւ
ասէ ցիս Տէր, Յերեսաց հիւսիսոյ բոր-
բոքեսցին չարիք ի վերայ բնակչաց երկ-
15 րի։ Զի ահաւասիկ ես [4]միախուռն կո-
չեցից զամենայն թագաւորութիւնս՟
թագաւորութեանց ի հիւսիսոյ երկրէ,
ասէ Տէր. եկեսցեն եւ արկցեն զիւրա-
քանչիւր աթոռ ի վերայ սեմոց դրանցն
Երուսաղեմի, եւ ի վերայ ամենայն
պարսպաց նորա շուրջանակի, եւ ի վե-
րայ ամենայն քաղաքաց Հրէաստանի։
16 Եւ խօսեցայց դատաստանաւ ընդ նոսա
վասն ամենայն չարեաց իւրեանց. զի
թողին զիս եւ զոհեցին աստուածոց օ-
տարաց, եւ երկիր պագին գործոց ձե-
ռաց իւրեանց։
17 Եւ դու ընդեա զմէջ քո, արի եւ ա-
սա նոցա զամենայն զոր միանգամ պա-
տուիրեմ քեզ. մի՛ երկիցես յերեսաց
նոցա, [5]եւ մի՛ զանգիտիցես առաջի նո-
ցա, զի ընդ քեզ եմ ես ի փրկել զքեզ,
18 ասէ Տէր՟։ Բայց ես ահաւադիկ եդի զքեզ
այսօր իբրեւ զքաղաք ամուր եւ իբրեւ
զսիւն երկաթի եւ իբրեւ զպարիսպ
պղնձի [6]ամուր՝ ամենայն՟ թագաւորաց
Հրէաստանի եւ իշխանաց նորա եւ քա-
հանայից նորա եւ ժողովրդեան երկրին։
19 Եւ մարտիցեն ընդ քեզ եւ քեզ ինչ ոչ
կարասցեն սանձանել, զի ես ընդ քեզ
եմ ի փրկել զքեզ, ասէ Տէր։

## ԳԼ. Բ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,

[1] Յեբր. [illegible] [2] Եբր. Ա՛, ա՛, Ադոնայի [3] Եբր. նշենւոյ

[4] Եբր. կոչեցից զամենայն տոհմս [5] Եբր. զի մի, յամօթ արարից զքեզ առաջի նոցա [6] Եբր. ի վերայ ամենայն երկրի։

Երթ եւ [1]ընթերցիր յականջս որդւոցն"
2 Երուսաղեմի եւ ասասցես, Այսպէս ա-
սէ Տէր. Յիշեցի զքեզ եւ զգութ ման-
կութեան քո, եւ զսէր [2]կատարման քո
3 ի գալն քեզ զհետ Սրբոյն Իսրայելի: Ա-
սէ Տէր՝ Սուրբն Իսրայելի, Տեառն է"
սկիզբն արմտեաց նորա. ամենեքեան
որ ուտեն զնա՝ զղջասցին, չարիք հաս-
ցեն ի վերայ նոցա, ասէ Տէր:
4 Լուարուք զբան Տեառն, տունդ Յա-
կոբայ եւ ամենայն ազգ տանդ Իսրա-
5 յելի. Այսպէս ասէ Տէր. Զի՞նչ մեղս
գտին յիս հարքն ձեր զի հեռացան յի-
նէն, եւ գնացին զհետ ունայնեաց, եւ ունա-
6 յի եղեն. Եւ ոչ ասացին՝ Ո՞ւր է Տէր
որ եհան զմեզ յերկրէն Եգիպտացւոց,
եւ առաջնորդեաց մեզ յանապատին,
յանբառ եւ յանկոխ եւ յանջուր եւ յան-
պտուղ երկրին եւ ի ստուերս մահու,
յերկրի՝ ընդ որ ոչ անց մարդ, եւ ոչ
7 բնակեաց ի նմա որդի մարդոյ. Եւ [3]ած-
րաւ զմեզ ի Կարմէլ" ուտել զպտուղ
նորա եւ զբարութիւնս: Եւ մտէք եւ
պղծեցէք զերկիրն իմ, եւ զժառան-
8 գութիւն իմ եդիք ի պղծութիւն: Եւ
քահանայքն ոչ ասացին՝ Ո՞ւր է Տէր.
եւ վարդապետք օրինաց իմոց ոչ ծա-
նեան զիս, եւ հովիւքն ամպարշտեցան
յիս. եւ մարգարէքն մարգարէանային
Բահաղու, եւ զհետ անշահիցն երթա-
9 յին: Վասն այնորիկ տակաւին դատե-
ցայց ընդ ձեզ, ասէ Տէր, եւ ընդ որ-
10 դիս որդւոց ձերոց դատեցայց: Արդ անց-
ցէք ընդ կղզիս Քետտացւոց եւ տե-
սէք, եւ ի Կեդար առաքեցէք եւ խե-
լամուտ եղերուք յոյժ, եւ տեսէք եթէ
11 եղե՞ւ այսպիսի ինչ. Եթէ փոխեցի՞ն
ազգքն զաստուածս իւրեանց, եւ նոքա
ոչ են Աստուածք. եւ ժողովուրդ իմ
փոխեաց զՓառս իւր, [4]ուստի ոչ օգնի-
12 ցին: Յիմարեցաւ" երկինք, վասն այ-
սորիկ եւ [5]սոսկացան յոյժ, ասէ Տէր.
13 Զի երկուս չարիս գործեաց ժողովուրդ
իմ. զիս թողին զաղբեւր ջրոյ կենդան-
ւոյ, եւ փորեցին իւրեանց գուբս, գուբս
ծակոտս՝ որք ոչ կարիցեն ունել ջուր:

[1] Եբր. գոչեա յականջս [2] Եբր. խօսման քո ի գալն քո զհետ իմ յանապատին, յերկրին ոչ սերմանելոյ: (3) Սրբութիւն էր Իսրայէլ Տեառն, [3] Եբր. տարայ զձեզ յերկիր պտղաբեր [4] Եբր. յանօգուտս (12) Յիմարեցարուք, [5] Եբր. սոսկացարուք, խռովեցարուք

14 Միթէ ծառա՞յ իցէ Իսրայէլ, կամ [6]ստրո՞ւկ
15 Յակոբ", զի՞ եղեն յաւար. Ի վերայ նո-
րա գոչեցին առեւծք, եւ ետուն զձայնս
իւրեանց, որ արարին զերկիր նորա ա-
ւերակ. եւ քաղաքք նորա կործանե-
16 ցան առ ի չգոյէ բնակչաց. Եւ որդիքն
Մեմփացւոց եւ Տափնացւոց [7]ծանեան
17 զքեզ եւ այպանեցին: Ո՞չ ապաքէն
թողուլն զիս արար քեզ զայդ, ասէ
Տէր" Աստուած քո, ի ժամանակի ածե-
18 լոյն զքեզ ընդ ճանապարհն: Եւ արդ
զի՞նչ կայ քո եւ ճանապարհին Եգիպ-
տացւոց՝ ըմպել քեզ զջուր [8]Գեհոնի,
եւ զի՞նչ կայ քո եւ ճանապարհին Ա-
սորեստանեայց՝ ըմպել [9]զջուրն գետոց:
19 Խրատեսցէ զքեզ ապստամբութիւնդ քո,
եւ չարիք" քո կշտամբեսցեն զքեզ. եւ
ծանիցես եւ տեսցես, թէ չար եւ դառն
է քեզ թողուլն [10]զիս, ասէ Տէր Աս-
տուած քո. եւ ոչ հաճեցայ ընդ քեզ,
20 ասէ Տէր Աստուած քո": Զի յաւիտենից
խորտակեցեր զլուծն քո, եւ խզեցեր
զու զկապանս քո. եւ ասացեր՝ Թէ Ոչ
ծառայեցից, այլ գնացից ի վերայ ամե-
նայն բլրոց բարձանց, եւ ի ներքոյ ա-
մենայն հովանաւոր ծառոց, եւ անդ
21 շռայլեցայց ի պոռնկութիւն: Եւ ես
տնկեցի զքեզ որթ պտղաբեր ամենե-
ւին ճշմարիտ. զիա՞րդ դարձար ինձ ի
22 դառնութիւն, որթդ օտարացեալ: Եթէ
լուասցիս բորակաւ, եւ յաճախեսցես
քեզ աճառ, սակայն ծրդեալ կաս յա-
նիրաւութիւնս քո առաջի իմ, ասէ Տէր
23 Տէր: Զիա՞րդ ասիցես թէ Ոչ պղծեցայ,
եւ զհետ Բահաղու ոչ գնացի. տես զճա-
նապարհս քո [11]ի գերեզմանս, եւ ծա-
24 նիր զինչ գործեցեր: Ընդ երեկոյս ձայն
լալոյ նորա զուժեաց ի ճանապարհս իւր.
յաճախեաց ի ջուրս անապատի. ըստ
ցանկութեան անձին իւրոյ այսպէս լի-
նէր. մատնեցաւ, եւ" ո՞ դարձուցէ

[6] Եբր. ընդոծի՞ն [7] Եբր. խորտակեցին զկատարն քո: (17) Ո՞չ ապաքէն զայս արարեր քեզ ի թողուլն քո զՏէր [8] Եբր. Սիովրի [9] Եբր. զջուր Գետոյն: (19) Խրատեսցէ զքեզ չարութիւն քո, եւ անհաւատարմութիւնք [10] Եբր. զՏէր Աստուած քո, եւ զի չիք երկեւղ իմ ի քեզ ասէ Ադոնայի Տէր զօրութեանց [11] Եբր. ի հովտին, և ծանիր զինչ գործեցեր, անդրուար արագագնաց որ խոտորէ զճանապարհս իւր: (24) Իշավայրի ուսեալ յանապատի ըստ ցանկութեան անձին իւրոյ ծծէ զհողմն, ի ցանկութենէ իւրմէ

զնա. ամենեքեան որ խնդրիցեն զնա՝
ոչ աշխատեսցին. [1]ի տառապանս նորա
25 գտցեն զնա: [2]Դարձո զոտս քո ի խիստ
ճանապարհէ", և զկոկորդ քո ի ծարա-
ւոյ. և [3]նա ասէ. կարօղ եմ. քանզի
սիրէր զօտարսն՝ և երթայր զհետ
նոցա":
26 Որպէս ամաչիցէ գող յորժամ ըմբռնի-
ցի, այնպէս ամաչեսցեն որդիքն Իսրա-
յէլի՝ ինքեանք և թագաւորք իւրեանց
և իշխանք իւրեանց, քահանայք իւ-
27 րեանց և մարգարէք իւրեանց: Ցփայտն
ասացին թէ Հայր իմ ես դու, և քա-
րին՝ թէ Դու ծնար զիս. և դարձու-
ցին յիս զթիկունս և ոչ զերեսս իւ-
րեանց. և ի ժամանակի չարեացն իւ-
րեանց ասասցեն, Արի և փրկեա զմեզ:
28 Եւ ո՞ւր են աստուածքն քո զոր արա-
րեր քեզ. յարիցեն [4]և փրկեսցեն" զքեզ
ի ժամանակի չարեաց քոց. զի ըստ
թուոյ քաղաքացն քոց էին քեզ աս-
տուածքն քո, Յուդա. [5]և ըստ թուոյ
անցիցն Երուսաղեմի զոհէին Բահաղու":
29 Արդ ընդէ՞ր [6]խօսիք ընդ իս. զի ա-
մենեքեան դուք ամպարշտեցայք, և"
ամենեքեան դուք անօրինեցայք յիս,
30 ասէ Տէր: Զուր հարի զորդիսն ձեր,
և խրատ [7]դուք ոչ ընկալարուք. սուր"
եկեր զմարգարէսն ձեր, իբրև առեւծ
[8]սատակիչ, և ոչ զարհուրեցարուք:
31 Լուարուք զպատգամ Տեառն. այսպէս
ասէ Տէր". միթէ անապա՞տ եղէ [9]տանն
Իսրայէլի, կամ աւեր երկիր խոպանա-
ցեա՞լ. զի" ասաց ժողովուրդ իմ, Ան-
տերունչք շրջեսցուք և առ քեզ ոչ ե-
32 կեսցուք: Միթէ մոռասցի՞ կոյս զզարդ
իւր, և հարսն զպանջարեղ կամար իւր.
բայց ժողովուրդ իմ մոռացաւ զիս զա-
33 ւուրս անթիւս: [10]Զի՞նչ ևս բարի հնա-
րեսցիս ի ճանապարհս քո խնդրել զհաչ-
տութիւն. և ոչ այդպէս, այլ և դու
իսկ անզգամեցար պղծել" զճանապարհս
34 քո: Եւ ի ձեռս քո գտաւ արիւն ան-
ձանց անանկաց անմեղաց. ոչ ի մի՛ն-
գափ գտանէ, այլ առ [11]ամենայն կաղ-
35 նեօք": Եւ ասացեր թէ Անմեղ եմ, դարձ-
ցի սրտմտութիւն նորա յինէն. ահա-
ւասիկ ես դատեցայց ընդ քեզ, զի ա-
36 սացեր թէ Ոչ մեղայ: [12]Զի արհամար-
հեցեր յոյժ կրկնել" զճանապարհս քո.
և յԵգիպտոսէ ամաչեսցես՝ որպէս ա-
37 մաչեցերն յԱսորեստանւոյն. Զի և ան-
տի ևս ձեռս ի գլուխ եդեալ. զի մեր-
ժեաց Տէր զյոյսն քո, և ոչ ևս աջո-
ղեսցիս ի նմա:

## Գլ. Գ

1 [13]Եթէ արձակեսցէ այր զկին իւր, և
գնասցէ ի նմանէ և լինիցի առն այ-
լում, եթէ դառնալով դարձցի՞ անդրէն
ի նոյն. ո՞չ ապաքէն պղծելով պղծիցի
[14]կինն այն. և դու պոռնկեցար ընդ հո-
վիւս բազումս, այլ դարձ առ իս, ա-
2 սէ Տէր: Ամբարձ զաչս քո [15]յուղղու-
թիւն՝ և տես. ո՞ւր ոչ թաթաւեցար.
ի ճանապարհս քո նստեր դու նոցա
իբրև [16]ագռաւ միայնացեալ թափուր".
և պղծեցեր զերկիրդ պոռնկութեամբ
3 քով և չարեօքն քովք: [17]Եւ ունէիր հո-
վիւս բազումս ի գայթակղութիւն քեզ."
երեսք կնոջ պոռնկի եղեն քո, անա-
4 մօթեցար առ ամենեսեան: [18]Ոչ իբրև
զտուն կոչեցեր զիս հայր և իշխան
5 կուսութեան քո: Միթէ յաւիտեա՞ն
կայցէ, կամ ի սպա՞ռ պահեսցի". ահա
խօսեցար և արարեր զայդ ամենայն
չարիս և զօրացար:
6 Եւ ասէ ցիս Տէր յաւուրս Յովսիայ
արքայի, Տեսե՞ր զինչ գործեաց [19]բնա-
կիչն Իսրայէլի". գնաց առանձինն ի վե-
րայ ամենայն լերանց բարձանց՝ և ի
ներքոյ ամենայն անտառախիտ ծառոց,
7 և անդ պոռնկեցաւ: Եւ ասացի յետ
[20]այնչափ պոռնկութեանն նորա", Դարձ
առ իս, և ոչ դարձաւ. և ետես զյո-

---

[1] Եբր. յամսեան [2] Եբր. Արգել զոտն քո ի մերկութենէ [3] Եբր. ասացեր, Զի՞ր յոյս. ոչ բնաւ. զի սիրեցի զօտարսն, և զհետ նոցա երթայց
[4] Եբր. եթէ կարօղ իցեն փրկել [5] Եբր. դ—կ—ւէ
[6] Եբր. մինչիք ընդ իս. [7] Եբր. ոչ ընկալան. սուր ձեր [8] Եբր. որ սատակէ:
(31) Ով ազգ, լուարուք զպատգամ Տեառն
[9] Եբր. Իսրայելի կամ երկիր աղջամղջին. ընդէ՞ր
[10] Եբր. Զի՞ է զի բարեքես զճանապարհս քո խնդրել սէր. վասն այնորիկ և կանանց իսկ չարաց ուսուցեր

[11] Կամ, ամենեսին սոսա [12] Եբր. Զի՞ յածիս յոյժ փոխել [13] Եբր. Ասեն, Եթէ [14] Եբր. երկիրն
[15] Եբր. ի վեր [16] Եբր. Արաբացի յանապատի
[17] Եբր. Վասնորոյ արգելան անձրևք, և անձրև անագան ոչ եղև. իսկ [18] Եբր. Ո՞չ ապաքէն այսուհետև կոչեսցես զիս, Հայր իմ. առաջնորդ մանկութեան իմոյ ես դու: (5) Միթէ յաւիտեան բարկանայցէ՞, կամ ի սպառ պահեսցէ՞ [19] Եբր. ապստամբն Իսրայէլ [20] Եբր. առնելոյ նորա զայս ամենայն

փութիւն նորա ուխտադրուժն Յուդա։
8 Եւ տեսի թէ յամենայնի որովք չնացաւ
[1]բնակիչն Իսրայելի՝ ըմբռնեցաւ", որ-
ձակեցի զնա, եւ ետու նմա թուղթ
ապահարզանի ի ձեռս նորա. եւ ոչ զար-
հուրեցաւ ուխտադրուժն Յուդա քոյր
նորա, այլ գնաց եւ պոռնկեցաւ եւ նա։
9 Եւ եղեւ [2]յոչինչ պոռնկութիւն նորա.
եւ" շաղախէր զերկիրն, զի չնայր ընդ
10 քարի եւ ընդ փայտի։ Եւ ի վերայ այսր
ամենայնի ոչ դարձաւ առ իս ուխտա-
դրուժ քոյր նորա Յուդա յամենայն սրտէ
11 իւրմէ, այլ ստութեամբ, ասէ Տէր։ Եւ
ասէ ցիս Տէր, Արդարացոյց զանձն իւր
ապստամբութիւնն Իսրայելի առ ուխ-
12 տազանցութեամբն Յուդայ։ Արդ երթ
եւ ընթերցիր զպատգամս զայսոսիկ ի
կողմանս հիւսիսոյ, եւ ասասցես, Դարձ
առ իս, [3]բնակիչդ Իսրայելի", ասէ Տէր,
եւ ոչ հաստատեցից զերեսս իմ ի վերայ
ձեր, զի ողորմած եմ ես, ասէ Տէր,
եւ ոչ պահեցից ձեզ ոխս յաւիտեան։
13 Բայց ծանիր զանիրաւութիւնս քո, զի
ի Տէր Աստուած քո ամպարշտեցար. եւ
տարածեցեր զճանապարհս քո օտարաց
ի ներքոյ ամենայն անտառախիտ ծա-
ռոց, եւ ձայնի իմում ոչ լուար, ասէ
14 Տէր։ Դարձարուք առ իս, որդիք ապս-
տամբեալք, ասէ Տէր, զի ես տիրեցի
ձեզ. եւ առից զձեզ մի ի քաղաքէ եւ
երկուս յազգէ, եւ տարայց զձեզ ի Սիոն.
15 Եւ տաց ձեզ հովիւս ըստ սրտի իմում.
եւ հովուելով հովուեսցեն զձեզ իմաս-
16 տութեամբ[4]։ Եւ եղիցի եթէ բազմա-
նայցէք եւ աճիցէք ի վերայ երկրի յա-
ւուրսն յայնոսիկ, ասէ Տէր, ոչ եւս ա-
սիցեն՝ Տապանակ կտակարանաց [5]Սրբոյն
Իսրայելի", եւ ոչ անկցի ի սիրտ, եւ ոչ
[6]անուանեսցի ի նմա". եւ ոչ եւս խնդ-
17 րեսցի, եւ ոչ գործեսցի։ Ի ժամանակին
յայնմիկ կոչեսցեն զԵրուսաղէմ աթոռ
Տեառն. եւ ժողովեսցին ամենայն ազգք
յանուն Տեառն յԵրուսաղէմ. եւ ոչ եւս
գնասցեն զհետ խորհրդոց սրտից իւ-
18 րեանց չարաց։ Յաւուրսն յայնոսիկ [7]ժո-
ղովեսցին տունն Իսրայելի առ տունն
Յուդայ". եւ եկեսցեն ի միասին [8]ի հիւ-
սիսոյ եւ յամենայն գաւառաց" յերկիրն
19 յորում ժառանգեցուցի զհարս նոցա։ Եւ
ես ասեմ, [9]Եղիցի, Տէր։ Զի" կարգեցից
զքեզ յորդիս, եւ տաց քեզ զերկիրն
ընտիր, ժառանգութիւն անուանի [10]Ա-
ստուծոյ ամենակալի" ազգաց. եւ ասա-
ցի թէ Հայր կոչեսցես զիս, եւ ոչ եւս
20 դառնայցես յինէն։ Բայց որպէս անզօ-
նէ կին զամուսին իւր, այնպէս անզօ-
նեաց զիս տունդ Իսրայելի, ասէ Տէր։
21 Ձայն [11]ի շրթանց գումեաց՝ լալոյ եւ
պաղատանաց որդւոցն Իսրայելի. զի
անիրաւեցան ի ճանապարհս իւրեանց
եւ մոռացան [12]զԱստուած Սուրբն" իւ-
րեանց։
22 Դարձարուք, [13]որդիք, դարձիք", եւ ես
բժշկեցից [14]զբեկումն ձեր. եւ ասացին,
Ահաւասիկ [15]կամք, զի դու ես Տէր Աս-
23 տուած մեր։ Արդարեւ [16]սուտ էին
բլուրք եւ զօրութիւնք բարձանց". բայց
ի ձեռն Տեառն Աստուծոյ մերոյ է փրկու-
24 թիւն Իսրայելի։ Եւ ամօթ մաշեաց զվաս-
տակս հարցն մերոց ի մանկութենէ [17]իւ-
րեանց, զխաշինս նոցա եւ զանդեայս,
եւ զուստերս եւ զդստերս իւրեանց։
25 Ննջեցաք ամօթով մերով, եւ ծածկե-
ցին զմեզ անարգանք մեր. քանզի ա-
ռաջի Աստուծոյ մերոյ մեղաք մեք եւ
հարքն մեր ի մանկութենէ մերմէ մինչեւ
ցայսօր. եւ ոչ լուաք ձայնի Տեառն Ա-
ստուծոյ մերոյ։

ԳԼ. Դ

1 Եթէ [18]դարձցի առ իս Իսրայէլ, ասէ
Տէր, դարձցի. եւ եթէ ընկեսցէ զգար-
շելիս իւր ի բերանոյ իւրմէ՝ վասն Աս-
տուծոյ Երուսաղեմի, եւ յերեսաց իմոց
2 երկիցէ, Եւ երդնուցու" թէ կենդանի է
Տէր ճշմարտութեամբ եւ իրաւամբք
եւ արդարութեամբ, օրհնեսցին նովաւ
3 ազգք եւ նովիմբ գովեսցին։ Զի այս-
պէս ասէ Տէր ցարս Յուդայ եւ ցբնա-
կիչսդ Երուսաղեմի, Հերկեցէք ձեզ

[1] Ոմն. ապստամբն Իսրայէլ [2] Ոմն. առ ցոփու-
թեան պոռնկութեան իւրոյ [3] Ոմն. ապստամբդ
Իսրայէլ [4] Ոմն. յիշեսցի յաւելու, եւ հանճարով
[5] Ոմն. Տեառն [6] Ոմն. յիշեսցեն զնա [7] Ոմն.
երթիցէ տունն Յուդայ ընդ տանն Իսրայելի
[8] Ոմն. յերկրէն հիւսիսոյ

[9] Ոմն. Զիա՞րդ [10] Ոմն. ի մէջ [11] Ոմն. ի վերայ
բլրոց [12] Ոմն. զՏէր զԱստուած [13] Ոմն. որ-
դիք ապստամբք [14] Ոմն. զապստամբութիւն
[15] Ոմն. գամք առ քեզ [16] Ոմն. ընդունայն է ի
բլրոց զօրութիւն, ամբոխ՝ ի լերանց [17] Ոմն.
մերմէ [18] Ոմն. դառնալոց իցես, Իսրայէլ,
դարձ առ իս, եւ եթէ ընկեսցես զգարշելիս
քո յերեսաց իմոց, մի՛ մոլորեսցիս։ (2) Եւ
երդնուցուս

հերկս, և մի՛ սերմանէք ի վերայ փշոց։
4 Թլփատեցարուք ¹Աստուծոյ ձերում",
և թլփատեցէք զանթլփատութիւն
սրտից ձերոց, արք Յուդայ և բնակիչք
Երուսաղեմի. զուցէ ելանիցէ իբրև
զհուր սրտմտութիւն իմ, բորբոքեսցի,
և ոչ ոք իցէ որ շիջուսցանիցէ յերեսաց
չար գործոց ձերոց։
5 Գոյժ տուք ի Հրէաստան, լու լիցի յԵ-
րուսաղէմ, և ասացէք՝ Փող հարէք ի
վերայ երկրին, զաղաղակ բարձէք, ասա-
ցէք. Ժողովեցարուք և մտցուք ի քա-
6 ղաքս պարսպաւորս։ ²Առէք փախերուք"
ի Սիոն, փութացարուք, մի՛ կայք. զի
ածից ես չարիս ի հիւսիսոյ և բեկումն
7 մեծ։ Ել առեւծ ի մորւոյ իւրմէ՝ ³սա-
տակել զազգս" խաղաց և ել ի տեղ-
ւոջէ իւրմէ՝ առնել զերկիր քո աւերակ.
և քաղաքք քո քակեսցին առ ի չգոյէ
8 բնակչաց ի նոսա։ Ի վերայ այսորիկ
քրձազգած եղերուք, կոծեցարուք, ճիչ
բարձէք. զի ոչ դարձաւ սրտմտութիւն
9 բարկութեան Տեառն ի մէնջ։ Եւ եղի-
ցի յաւուր յայնմիկ, ասէ Տէր, կորիցէ
սիրտ թագաւորին և սիրտ իշխանացն.
քահանայքն յիմարեսցին և մարգարէքն
զարմասցին։
10 Եւ ասեմ, Ո՛ Տէր Տէր, խաբելով ու-
րեմն խաբեցեր զժողովուրդն զայն և
զԵրուսաղէմ. զի ասացեր թէ Խաղա-
ղութիւն եղիցի ձեզ, և ⁴հասանիցէ
սուր մինչև յանձինս նոցա։
11 Ի ժամանակին յայնմիկ ասասցեն ժո-
ղովրդդ ցայդ և ցԵրուսաղէմ, Այս
⁵մոլորութեան յանապատի. ճանապարհ"
դստեր ժողովրդեան իմոյ՝ ոչ ի մաքրու-
12 թիւն և ոչ ի սրբութիւն։ Ոգի լրու-
թեան ի նոցանէ եկեսցէ ինձ. այսու-
հետև ես խօսեցայց ընդ նոսա դատաս-
տանօք իմովք։
13 Ահա իբրև զամպ ելցէ և իբրև
զմրրիկ կառք նորա, արագագոյն քան
զարծուիս երիվարք նորա. վա՜յ մեզ,
14 զի չուառացաք։ Լուա ի չարեաց զսիրտ
քո, Երուսաղէմ, զի ապրեսցիս. մին-
չև ցե՞րբ գտանիցին ի քեզ խորհուրդք
15 ⁶ցաւոց քոց"։ Զի ձայն զուժկանի ի Դա-
նայ, և ⁷լուիցին ցաւք" ի լեռնէ Եփ-
16 րեմի։ Յուշ արարէք ազգաց. ահաւա-
սիկ ⁸հասեալ են յԵրուսաղէմ, պատմե-
ցէք" թէ գունդք գան յերկրէ հեռաս-
տանէ, ձայն ետուն ի քաղաքս Հրէաս-
17 տանի։ Իբրև պահապանք ագարակի
շուրջ պատեցան զնովաւ, զի ⁹անփոյթ
18 արարեր զինէն", ասէ Տէր։ Ճանապարհ
քո և գնացք քո արարին քեզ զայդ ա-
մենայն. այդ խիլ է չարութիւն քո և
դառնութիւն, զի եհաս ի սրտի քում։
19 Որովայն իմ, որովայն իմ ցաւէ, ¹⁰և
ճաչակելիք" սրտի իմոյ հեծէ. սիրտ իմ
գելու, ¹¹և անձն իմ ոչ դադարեսցէ".
զի ձայն փողոյ լուայ, անձն իմ, զգոյժ
պատերազմի ¹²և զթշուառութեան"։
20 Բեկումն ի վերայ ¹³բեկման, բողոք բար-
ձէք", զի թշուառացաւ ամենայն եր-
կիր. յանկարծակի ¹⁴չուառացաւ խո-
րանն, և քակեցան փեղկք խորանի
21 իմոյ"։ Մինչև յե՞րբ տեսանիցեմ ¹⁵փախըս-
22 տականս, լսիցեմ զձայն փողոյ։ Զի
¹⁶իշխանք ժողովրդեան իմոյ" զիս ոչ ծա-
նեան. զի որդիք անմիտք են, և ոչ
հանճարեղք. իմաստունք են ի չար գոր-
ծել, և զբարի ինչ առնել ոչ գիտացին։
23 Հայեցայ յերկիր, և ահա թափուր,
և ոչ ինչ դոյր. և յերկինս՝ և ոչ էր
24 լոյս նոցա։ Տեսի զլերինս, և կային յե-
րերի, և զամենայն բլուրս խռովեալս.
25 Հայեցայ, և ահա ոչ դոյր մարդ. և ա-
մենայն թռչունք երկնից ¹⁷սարսեցին։
26 Տեսի, և ահա աւերակ էր Կարմեղոս",
և ամենայն քաղաքք նորա ¹²հրձիգք յե-
րեսաց Տեառն, և յերեսաց բարկութեան
սրտմտութեան նորա ապականեցան։
27 Այսպէս ասէ Տէր, Աւերեսցի երկիր
28 ամենայն, և վախճան ոչ արարից։ Ի
վերայ այսր ամենայնի սուգ առցէ եր-
կիր և խաւարեսցին երկինք ի վերուստ.
զի խօսեցայ և ոչ զղջացայց, դիմեցի՝
29 և ոչ դարձայց ի նմանէ։ Ի ձայնէ
հեծելոյ և ի զրկալիր աղեղանց խու-
սեաց ¹⁸աշխարհն ամենայն, և սորեցին
յայրս," և թաքեան յանտառս, և ե-

¹Եբր. Տեառն ²Եբր. Առէք նշան ³Եբր. և ապականիչ ազգաց ⁴Եբր. հասու ⁵Եբր. տօթիկ ի բարձանց յանապատի ընդ ճանապարհ ⁶Եբր. չարեաց քոց ⁷Եբր. որոյ տայն լսել չարիս

⁸Եբր. պատմեցէք զԵրուսաղեմէ ⁹Եբր. ապստամբեցաւ յինէն ¹⁰Եբր. շտեմարան ¹¹Եբր. ոչ լռեցից ¹²Յեբր. պակասէ ¹³Եբր. բեկման գուժի ¹⁴Եբր. աւերեցան խորանք իմ, վաղվաղակի վարագոյրք իմ ¹⁵Եբր. դրօշս ¹⁶Եբր. յիմար է ժողովուրդ իմ, ¹⁷Եբր. փախուցեալ էին։ (23) Տեսի, և անապատ լեալ էր երկիրն պտղատու ¹⁸Եբր. քաղաքն ամենայն

լին ի քարանձաւս. ամենայն քաղաքք
30 լքան, եւ ոչ բնակէր ի նոսա մարդ։ Եւ
դու, թշուառական, զի՞ գործեսցես.
եթէ կարմիր զգեցցիս, եւ զարդու ոսկ-
ւով զարդարեսցիս, եւ ամասցես ծարիր
յաչս քո, ի զուր են զարդարանքն քո.
մերժեցին զքեզ հոմանիքն քո, եւ խնդրեն
31 զանձն քո։ Զի ձայն իբրեւ զերկանց[1] անդ-
րանկածնի լուայ զհեծութեան քո. ձայն
դստեր Սիոնի մեղկասցի, եւ լքցէ զձեռս
իւր," Վա՜յ ինձ, զի պակասեաց անձն
իմ ի վերայ սպանելոցն։

Գլ. Ե

1 Ընթացարուք յայսկոյս յայնկոյս ընդ
ճանապարհս Երուսաղեմի, եւ տեսէք եւ
ծաներուք եւ խնդրեցէք ի հրապարակս
նորա, եթէ գտանիցէք այր մի որ առ-
նիցէ իրաւունս եւ խնդրիցէ [2]հաւատս.
2 եւ եղէց նոցա քաւիչ, ասէ Տէր։ Ե-
թէ" ասիցեն Կենդանի է Տէր, թէպէտ
եւ սուտ խոկ երդնուցուն։
3 Տէր, [3]աչք քո ի հաւատս". տանջեցեր
զնոսա, եւ նոցա ոչ ցաւեաց. վախճա-
նեցեր զնոսա, եւ ոչ կամեցան ընդու-
նել զխրատ. կարծրացուցին զերեսս իւ-
րեանց քան զվէմ, եւ ոչ կամեցան դառ-
4 նալ։ Եւ ես ասացի, [4]Թերեւս աղքատք
իցեն, վասն այնորիկ" ոչ կարացին ի-
մանալ զճանապարհս Տեառն եւ զիրա-
5 ւունս Աստուծոյ[5]. Երթայց առ հա-
րուստս եւ խօսեցայց ընդ նոսա, թէ
նոքա գիտասցեն զճանապարհս Տեառն եւ
զիրաւունս Աստուծոյ[5]. եւ նոքա ահա-
նիկ առ հասարակ խորտակեցին զլուծն,
6 եւ խզեցին զատամանս։ Վասն այնորիկ
եհար զնոսա առեւծ յանտառէ, եւ գայլ
[6]մինչեւ ի տունս նոցա" սատակեաց զնո-
սա. զարթեաւ ինձ ի վերայ քաղաքաց
նոցա, եւ ամենեքեան որ ելանիցեն ի
նոցանէ՝ անկցին զեչ. զի յաճախեցին
զամպարշտութիւնս իւրեանց, զօրացան
յապստամբութեան իւրեանց։
7 Որո՞վ քաւեսցայց ընդ քեզ.
որդիքն քո թողին զիս, եւ երդնուին ի
չաստուածն. յագեցուցի զնոսա՝ եւ շնա-
յին, եւ ի պոռնկանոցս օթեւանս առ-
8 նէին։ Ձիք [7]մատակախանձք եղեն", իւ-
րաքանչիւր ի կին ընկերի իւրոյ վրնջէին։
9 Միթէ ի վերայ այսր ամենայնի ո՞չ առ-
նիցեմ այցելութիւն, ասէ Տէր, կամ յաղ-
գէ այնպիսւոյ ո՞չ խնդրեսցէ վրէժ անձն իմ։
10 Ելէք ի մարտկոցս նորա եւ կործա-
նեցէք. բայց վախճան մի՛ առնիցէք.
[8]թողէք զհիմունս նորա՝ զի Տեառն են"։
11 Զի արհամարհելով արհամարհեցին զիս
տունն Իսրայէլի եւ տունն Յուդայ, ա-
12 սէ Տէր. Ստեցին Տեառն իւրեանց, եւ
ասեն՝ Ոչ ինչ է այդ. եւ ոչ եկեսցեն ի
վերայ մեր չարիք, եւ զսուր եւ զսով
13 ոչ տեսցուք։ Մարգարէքն [9]մեր էին ի
հողմ, եւ բան Տեառն ոչ գոյր ի նոսա.
այնպէս եղիցի նոցա։
14 Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր Ա-
ստուած Ամենակալ. Փոխանակ զի խօ-
սեցայք զբանդ զայդ, ահաւասիկ ես ե-
տու զբան իմ ի բերան քո՝ հուր, եւ
զժողովուրդ զայդ՝ փայտ, եւ կերիցէ
15 զնոսա։ Զի ահաւասիկ ես ածից ի վե-
րայ ձեր ազգ ի հեռաստանէ, տունդ Իս-
րայէլի, ասէ Տէր, ազգ որ [10]առաջին,
ազգ որ յաւիտենից, ազգ որոյ ոչ լսի-
ցես զլեզու նորա, եւ ոչ իմանայցես
16 զխօսս նորա։ Կապարճք նորա իբրեւ
զգերեզմանս բաց են. ամենեքին զօրա-
17 ւորք։ Եւ կերիցեն զհունձս ձեր եւ զհաց,
[11]եւ կերիցեն զուստերս ձեր եւ զդստերս",
եւ կերիցեն զոչխար եւ զարջառ ձեր,
եւ կերիցեն զայգիս եւ զթզենիս ձեր եւ
զձիթենիս. եւ [9]կասեսցեն զամուր ա-
մուր քաղաքս ձեր յորս դուքն պանծա-
18 ցեալ էք՝ սրով սատակեսցեն։ Եւ ե-
ղիցի յաւուր յայնմիկ, ասէ Տէր [9]Ա-
ստուած քո", ոչ արարից զձեզ ի վախ-
19 ճան։ Եւ եղիցի յորժամ ասիցէք՝ Վասն
է՞ր արար Տէր Աստուած մեր մեզ զայս
ամենայն. ասիցես ցնոսա, Փոխանակ զի
թողէք զիս եւ ծառայեցէք աստուածոց
օտարաց յերկրի ձերում, նոյնպէս ծառա-
յեսջիք օտարաց յերկրի՝ որ ոչ ձեր իցէ։
20 Պատմեցէք զայդ ի տունն Յակոբայ,
եւ լսելի լիցի ի տունն Յուդայ, եւ ա-
21 սացէք, Լուարուք զայս, ժողովուրդ յի-

[1]Եբր. ծննդականի լուայ, զանձկութիւն ան-
դրանկածնի, զձայն դստեր Սիոնի որ հա-
ռաչէ, և բացեալ զձեռս իւր՝ ասէ. [2]Եբր.
զճշմարտութիւն, և ներեցից քաղաքին։ (2)
Եւ եթէ [3]Եբր. ո՞չ ապաքէն աչք քո ի ճշմար-
տութիւն [4]Եբր. Արդարեւ աղքատ են նոքա
յիմարք են, զի [5]Եբր. զօրէնս Աստուծոյ իւրեանց
[6]Եբր. անապատի, կամ, երեկոյին

[7]Եբր. անբռնցեալ ըստ ուսոյ [8]Եբր. բար-
ձէք զպարիսպս նորա, զի չեն Տեառն [9]Յեբր.
դատարկ [10]Եբր. Հզօր [11]Եբր. զոր ուտելոց
էին ուստերք քո եւ դստերք քո

մար եւ անմիտ , որոց աչք են եւ ոչ
22 տեսանեն , եւ ականջք՝ եւ ոչ լսեն ։ Ե-
թէ յինէն ո՞չ երկնչիցիք , ասէ Տէր , կամ
յերեսաց իմոց ո՞չ ամաչիցէք . որ կար-
գեցի զաւազ սահման ծովու , հրաման
յաւիտենական՝ եւ ոչ անցցէ զնովաւ .
խռովեսցի՝ եւ ոչ կարասցէ եղանել , գո-
չեսցեն ալիք նորա՝ եւ ոչ անցցեն զնո-
23 վաւ ։ Եւ ժողովրդեանս այսորիկ եղեւ
սիրտ անհնազանդ եւ անհաւան . թիւ-
24 րեցան՝ եւ անցին գնացին . Եւ ոչ ա-
սացին ի սիրտ իւրեանց , Երկիցուք ի
Տեառնէ Աստուծոյ մերմէ , որ տայ մեզ
զանձրեւ զկանուխ եւ [1]զանագան , ըստ
ժամանակի լրութեան հրամանի հնձոց ,
25 եւ պահեսցէ զմեզ՝՝ ։ Անօրէնութիւնք [2]մեր
խոտորեցուցին [3]զայն , եւ մեղք [2]մեր մեր-
26 ժեցին զբարութիւնս [4]ի մէնջ ։ Զի գտան
ի մէջ ժողովրդեան իմոյ ամպարիշտք ,
[5]եւ որոգայթս լարեւ զխարմս հաւա-
ռոց կանգնեցին ապականել զմարդիկ ,
27 Եւ ըմբռնէին իբրեւ զորոգայթս ան-
կեալ՝՝ լի թռչնովք , այնպէս լի են տունք
նոցա նենգութեամբ . վասն այսորիկ
28 առաւելացան մեծացան . Գիրացան եւ
պարարտացան , եւ անցին զբանիւք [6]ի-
մովք ի չարութիւն՝՝ . զդատաստան որ-
բոյ ոչ դատեցան , զիրաւունս որբոյն
ոչ իրաւացուցին , [7]եւ զդատաստան
29 այրւոյն՝՝ ոչ դատեցան ։ Միթէ ի վերայ
այսր ամենայնի ո՞չ առնիցեմ այցելու-
թիւն , ասէ Տէր , կամ յազգէ այնպի-
30 սւոյ ո՞չ խնդրիցէ վրէժ անձն իմ ։ [8]Յի-
մարութիւնք եւ արհաւիրք եղեն ի վե-
31 րայ երկրի . Մարգարէք սուտ մարգա-
րէանան , եւ քահանայք [9]ծափս հարկա-
նեն նոցա՝՝ , եւ ժողովուրդ իմ սիրեաց
զայն . եւ զի՞նչ գործիցէք առ յապայ ։

## Գլ. Զ

1 [10]Զօրացարուք , որդիք Բենիամենի , [11]ի մէջ
Երուսաղեմի . փող հարէք ի Թեկուէ ,
եւ ի վերայ Բեթաքարմայ առէք նշան .
զի չարիք կարկառեալ գան ի հիւսիսոյ ,
2 եւ բեկումն [12]մեծ եղիցի՝՝ Գեղեցկին
եւ փափկացելոյն [13]եւ բարձցի բարձ-
3 րութիւն քո , դուստր՝՝ Սիոնի ։ Եկեսցեն
ի նա հովիւք եւ խաշինք իւրեանց , եւ
կանգնեսցեն շուրջ զնովաւ զխորանս
իւրեանց , եւ հովուեսցեն իւրաքանչիւր
4 [14]ձեռամբ ։ Պատրաստեցարուք ի վերայ
նորա ի պատերազմ , արիք եւ ելցուք ի
վերայ նորա ի մէջօրէի . վա՜յ մեզ , զի տիւն
կործանեցաւ , եւ [15]հասին մեզ ստուերք
5 երեկոյայ ։ Արիք եւ ելցուք գիշերի , եւ
6 ապականեսցուք [16]զհիմունս նորա ։ Զի
այսպէս ասէ Տէր զօրութեանց , Զար-
դեցէք [17]զփայտակերտս նորա , արկէք ի
վերայ Երուսաղեմի զօր . զի նա է քա-
ղաք ամենեւին սուտ ,՝՝ բռնութիւն ի
7 մէջ նորա ։ Զոր օրինակ [18]ցրտացուցանէ
գուբ զջուր իւր , այնպէս եւ նա [18]ցրտա-
ցուցանէ զչարիս իւր . ամպարշտու-
թիւն եւ չարութիւն լուիցի ի միջի նո-
րա , յանդիման [19]իւր հանապազ . ցաւովք
8 եւ սանջանօք՝՝ Խրատեսցիս , Երուսա-
ղէմ , զուցէ երբեք վերասցի անձն իմ ի
քէն , զուցէ երբեք արարից զքեզ անա-
պատ երկիր՝ ուր ոչ ոք երբեք բնակեսցէ ։
9 Զի այսպէս ասէ Տէր զօրութեանց .
[20]կթեցէք , կթեցէք , ճռաքաղ արարէք՝՝
զմնացորդս Իսրայէլի , [21]եւ անցրէն
կրկնեսջիք՝՝ որպէս կթօղ յոճ իւր ։
10 Ընդ ո՞ւմ խօսեցայց , եւ ո՞ւմ ե-
ղից վկայութիւն , եւ լուիցեն . ահա-
ւասիկ անթլփատ են ականջք նոցա , եւ
ոչ կարեն լսել . ահա բան Տեառն եղեւ
նոցա ի նախատինս , եւ ոչ եւս ախոր-
11 ժեսցեն զնա ։ [22]Եւ ես զբարկութիւն իմ
լցի եւ արգելի , եւ ոչ վախճանեցի զնո-
սա՝՝ . հեղից ի վերայ տղայոց արտա-
քուստ , եւ ի ժողովս երիտասարդաց ի
միասին . զի այր եւ կին առ հասարակ
ըմբռնեսցին , ծեր՝ հանդերձ կատարե-
12 լովն աւուրբք [23]ընկրկեսցին ։ Եւ ըմբռնես-
ցին տունք նոցա ի ձեռս օտարաց , անդք
եւ կանայք նոցա ի միասին . զի ձգեցից

[1]Եբր. զանագան ի ժամանակի իւրում. զեւթնե-
րորդս կարգեալս հնձոց պահեսցէ մեզ [2]Եբր.
ձեր [3]Եբր. զայնոսիկ [4]Եբր. ի ձէնջ [5]Եբր.
որ դարանին իբր զհաւորս կծկեալ , լարել որո-
գայթս ըմբռնել զմարդիկ ։ (27) Որպէս վանդակ
[6]Եբր. չարաց [7]Եբր. եւ յաջողեցան . եւ զդա-
տաստան տնանկին [8]Եբր. Զարմանք [9]Եբր.
իշխեն ի ձեռն նոցա [10]Եբր. Փախերուք [11]Եբր.
ի միջոյ

[12]Եբր. մեծ . [13]Եբր. Նմանեցուցի զդուստր [14]Եբր.
զիւր տեղի [15]Եբր. ձգեցան [16]Եբր. զպատուարանս
[17]Եբր. զծառաստանս նորա , եւ ածէք զԵրուսա-
ղեմաւ պատնէշ . զի նա է քաղաք այցելու-
թեան , եւ համակ [19]Եբր. բխեցուցանէ
[19]Եբր. իմ հանապազ ցաւք եւ հարուածք ։
[20]Եբր. Կթելով կթեսցեն իբրեւ զայգի [21]Եբր.
դարձո զձեռն քո [22]Եբր. Եւ բարկութեամբ
Տեառն լի եմ , խոնջեալ եմ ի համբերելոյ
[23]Յեբր. դադարէ

զձեռն իմ ի վերայ բնակչաց երկրին այ-
13 նորիկ, ասէ Տէր։ Զի ի փոքունց նո-
ցա մինչեւ ցմեծամեծս՝ ամենեքեան
[1]կատարեցին զանօրէնութիւնս, ի քա-
հանայէ մինչեւ ի սուտ մարգարէ" ամե-
14 նեքեան արարին ստութիւն։ Եւ բժշկէին
զհարուածս զաւեր ժողովրդեան իմոյ
[2]ընդ արհամարհանս", եւ ասէին՝ Խա-
ղաղութիւն, խաղաղութիւն. եւ ո՞ւր է
15 խաղաղութիւն։ Յամօթ եղեն զի [3]պա-
կասեցան. եւ ոչ որպէս ամաչեցեալք
ամաչեցին, եւ զանարգանս իւրեանց ոչ
առին ի միտ. վասն այնորիկ անկցին [4]ի
կործանումն իւրեանց", եւ ի ժամանա-
կի այցելութեան իւրեանց սատակես-
ցին, ասէ Տէր։
16 Այսպէս ասէ Տէր. Կացէք ի ճանա-
պարհս եւ զննեցէք, եւ հարցէք զյա-
ւիտենական շաւղաց [5]Տեառն. եւ տե-
սէք ո՞ր է ճանապարհ բարի, եւ գնա-
ցէք ընդ նա, եւ գտջիք [6]սրբութիւն
անձանց ձերոց. եւ ասացին թէ՝ Ոչ երթի-
17 ցուք։ Եւ կացուցի ի վերայ ձեր դէտս,
լուարուք բարբառոյ փողոյն. եւ ասեն, Ոչ
18 լուիցուք։ Վասն այնորիկ [7]լուան ազգք,
19 եւ որ հովուէին զհօտս" ի նոսա։ Լուր,
երկիր, ահաւասիկ ես ածից ի վերայ
ժողովրդեանդ այդորիկ չարիս [8]ըստ
պտղոյ ապստամբութեան իւրեանց", զի
բանից իմոց ոչ անսացին եւ զօրէնս իմ
20 մերժեցին։ Ընդէ՞ր է այդ զի [9]բերես ինձ
խունկս" ի Սաբայ, եւ կինամոմոն յերկ-
րէ հեռաստանէ. ողջակէզքն ձեր չեն
ընդունելի, եւ զոհք ձեր ինձ ոչ քաղց-
21 րացան։ Վասն այդորիկ այսպէս ասէ
Տէր. Ահաւասիկ ես տաց [10]ի վերայ ժո-
ղովրդեանդ այդորիկ ախտ, եւ ախտա-
ցին" ի նմին հարք եւ որդիք ի միասին,
դրացին եւ ընկեր իւր կորիցեն։
22 Այսպէս ասէ Տէր. Ահաւասիկ զօր
գայ ի հիւսիսոյ, [11]ազգ մեծ. թագաւորք
բազումք զարթիցեն" ի ծագաց երկրէ,
23 Աղեղնաւորք եւ տիգաւորք, ազգ ժպիրհ
եւ անողորմ. ձայն նորա իբրեւ զձայն
ծովու յարուցելոյ. [12]կառօք եւ երիվա-
րօք ճակատեսցի, եւ պատեսցի իբրեւ
զհուր" ի պատերազմ ի վերայ քո, դուստր
Սիոնի։
24 Լուաք զլուր նոցա. եւ լքան ձեռք
մեր, նեղութիւնք կալան զմեզ իբրեւ
25 երկնող ծննդականի։ Մի՛ ելանէք յանդս,
եւ ընդ ճանապարհս մի՛ գնայք. զի սուր
26 թշնամեաց [13]շուրջ պատեալ է"։ Դուստր
ժողովրդեան իմոյ, քուրձ զգեցիր. մո-
խիր տարածեա, առ զսուգ [14]սիրելւոյ,
եւ կոծեաց կոծ ողորմ. զի յանկարծակի
եկեսցէ թշուառութիւն ի վերայ մեր։
27 [15]Փորձիչ ետու զքեզ ժողովրդոց պա-
շարելոց, եւ գիտասջիր ի փորձել ինձ
28 զճանապարհս դոցա։ Ամենեքեան անհնա-
զանդք՝ գնան կամակորութեամբ". եր-
բեւ զպղինձ եւ զերկաթ՝ ամենեքեան
29 ապականեալք։ Պակասեցին փուքք ի
հրոյ, ապականեաց կապար. զուր աշ-
խատի արծաթագործն, [16]եւ նոցա չա-
30 րիքն ոչ հալեցան"։ Արծաթ խոտան կո-
չեցէք զնոսա, զի խոտեաց զնոսա Տէր։
[5]Լուարուք զպատգամս Տեառն, ամե-
նայն Հրէաստան։"

ԳԼ. Է

1 Պատգամն որ եղեւ առ Երեմիա ի Տեառ-
2 նէ՝ եւ ասէ, Կաց ի դրան տանն Տեառն
եւ [17]ընթերցիր անդ զբանս զայս, եւ ա-
սասցես, Լուարուք զբան Տեառն, ա-
մենայն Հրէաստան որք մտանէք ընդ
դրունս ընդ այդոսիկ երկիր պագանել
3 Տեառն։ Այսպէս ասէ Տէր զօրութեանց՝
Աստուած Իսրայելի. Ուղիղ արարէք
զճանապարհս ձեր եւ զգնացս, եւ բնա-
4 կեցուցից զձեզ ի տեղւոջս յայսմիկ։ Եւ
մի՛ յանձնապաստան լինիք ի բանս ստու-
թեան, [5]զի ամենեւին ոչ օգնեսցեն ձեզ"
որ ասեն՝ Տաճար Տեառն, տաճար Տեառն,
5 տաճար Տեառն է։ Եթէ ուղղելով ուղ-
ղիցէք զճանապարհս ձեր եւ զգնացս,
եւ եթէ առնելով առնիցէք իրաւունս ի
6 մէջ առն եւ ընկերի իւրոյ, Եւ զեկն եւ
զորբն եւ զայրին ոչ յաղթահարիցէք,

---

[1]Եբր. զհետ եղեն ագահութեան, և ի մարգարէէ մինչեւ ի քահանայ [2]Եբր. հարեւանցի [3]Եբր. արարին գարշութիւն [4]Եբր. ի մէջ անկելոց [5]Յեբր. [illegible] [6]Եբր. հանգիստ [7]Եբր. լուարուք, ազգք, եւ ծաներուք, ժողովք, որ [8]Եբր. զպտուղ խորհրդոց նոցա [9]Եբր. եկեսցէ ինձ խունկ [10]Եբր. ժողովրդեանդ այդմիկ գլորումն, եւ գլորեսցին [11]Եբր. եւ ազգ մեծ զարթիցէ

[12]Եբր. հեծեալք ինքեա երիվարաց, կազմեալք իբրեւ այր [13]Եբր. երկեւղ շուրջանակի [14]Եբր. միամօրոյ [15]Եբր. Պատուար ետու զքեզ ժողովրդեան իմում և ամրութիւն, եւ գիտասցես եւ փորձեսցես զճանապարհս դոցա։ (28) Ամենեքեան նոքա ապստամբ կամակոր. գնան քսութեամբ [16]Եբր. զի չարք ոչ կորզեցան [17]Եբր. քարոզեա

եւ արիւն անպարտ ոչ հեղուցուք ի տեղ-
ւոջդ յայդմիկ, եւ զհետ աստուածոց օ-
7 տարաց ոչ երթիցէք չարի ձերում, Բնա-
կեցուցից զձեզ ի տեղւոջդ յայդմիկ,
յերկրի զոր ետու հարցն ձերոց յաւի-
տենից մինչեւ յաւիտեան ։
8 Ապա թէ դուք յանձնապաստան լի-
ցէք ի բանս ստութեան, ուստի ոչինչ
9 օգտիցիք ։ Եւ գողանայցէք եւ սպանա-
նիցէք եւ շնայցէք եւ երդնուցուք սուտ,
եւ արկանիցէք խունկս Բահաղու, եւ
երթիցէք զհետ աստուածոց օտարաց՝
զորս ոչ գիտիցէք, [1]առոց, ուստի եւ
10 չար լինիցի ձեզ". Եւ գայցէք կայցէք
առաջի իմ ի տանս յայսմիկ՝ յորոյ վե-
րայ կոչեցեալ է անուն իմ. եւ ասիցէք,
[2]Մերժեցաք յամենայն" զամենայն զար-
11 շելիսն զայնոսիկ ։ Միթէ այրս աւազա-
կա՞ց եղեւ տունդ [3]իմ, յորոյ վերայ կո-
չեցեալ է անուն իմ, այդր առաջի ձեր ․
12 եւ ես անուանի տեսի, ասէ Տէր ։ [4]Զի
չոգայք" ի տեղին իմ ի Սելով, ուր բնա-
կեցուցի զանուն իմ անդ զառաջինն ․
եւ տեսէք զինչ արարի ընդ նա յերե-
սաց չարեաց ժողովրդեան իմոյ Իսրայէլի ։
13 Եւ արդ փոխանակ զի արարէք զայդ
ամենայն գործս, ասէ Տէր, եւ խօսեցայ
ընդ ձեզ ընդ առաւօտս [5]խօսելով՝ եւ
ոչ լուարուք ինձ, կոչեցի զձեզ՝ եւ ոչ
14 ետուք ինձ պատասխանի, Եւ արարից
ընդ տունդ ընդ այդ յորոյ վերայ կոչե-
ցեալ է անուն իմ, յոր դուքդ ապաս-
տան էք, եւ ընդ տեղիդ զոր ետու ձեզ
եւ հարցն ձերոց, որպէս արարի ընդ
15 Սելով ․ Եւ ընկեցից զձեզ յերեսաց ի-
մոց, որպէս ընկեցի զեղբարս ձեր՝ զա-
մենայն զաւակն Եփրեմեան ։
16 Եւ դու մի՛ կար յաղօթս ի վերայ ժո-
ղովրդեանդ այդորիկ, եւ մի՛ խնդրեր ի
վերայ դոցա ողորմութիւն, եւ մի՛ ա-
ղաչեր, եւ մի՛ անկանիր առաջի իմ վասն
17 դոցա ․ զի ոչ լսեմ քեզ ։ Եթէ ո՞չ տե-
սանես զինչ գործեն դոքա ի քաղաքս
Յուդայ եւ ի ճանապարհս Երուսաղեմի ։
18 Որդիք նոցա փայտ քաղեն, եւ հարքն
նոցա հուր արկանեն, եւ կանայք նո-
ցա հայս հարկանեն, առնել կարկան-
դակս [6]զօրութեանց երկնից ․ եւ նուի-
րեն նուէրս աստուածոց օտարաց, զի
19 բարկացուցանիցեն զիս ։ Միթէ զի՞ս բար-
կացուցանիցեն, ասէ Տէր, եւ ո՞չ զան-
ձինս, զի ամաչեսցեն երեսք նոցա ։
20 Վասն այսորիկ այսպէս ասէ [7]Տէր ․ Ա-
հա զբարկութիւն եւ զսրտմտութիւն իմ
հեղից ի վերայ տեղւոյդ այդորիկ, ի վե-
րայ մարդոյ եւ անասնոյ, եւ ի վերայ
փայտի ագարակի, եւ ի վերայ արդեանց
երկրի, բորբոքեսցի եւ ոչ շիջցի ։
21 Այսպէս ասէ Տէր զօրութեանց Ա-
ստուած Իսրայէլի ․ Զողջակէզս ձեր ժո-
ղովեցէք հանդերձ զոհիւք ձերովք, եւ
22 կերայք միս ․ Զի ոչ խօսեցայ ընդ հարանց
ձեր, եւ ոչ պատուէր ետու նոցա յա-
ւուրն յորում հանի զնոսա յերկրէն Ե-
գիպտացւոց՝ վասն բանի ողջակիզաց եւ
23 զոհից ։ Այլ զայս բան պատուիրեցի նո-
ցա եւ ասեմ, Լուարուք ձայնի իմում,
եւ ես եղէց ձեզ յԱստուած, եւ դուք
եղիջիք ինձ ի ժողովուրդ, եւ գնասջիք
յամենայն ճանապարհս իմ զոր պատուի-
24 րեցի ձեզ, զի բարի լինիցի ձեզ ։ Եւ ոչ
լուան ինձ, եւ ոչ անսացին ունկն նոցա ։
այլ գնացին ըստ [8]խորհրդոց սրտից իւ-
րեանց չարաց ․ եւ եղեն յետս եւ ոչ յա-
25 ռաջ ։ Յօրէ յորմէ ելին հարքն [9]նոցա
յերկրէն Եգիպտացւոց մինչեւ ցայսօր,
եւ արդ առաքեցի առ ձեզ զամենայն
ծառայս իմ զմարգարէս ի տուէ ․ ընդ
26 առաւօտ [10]առաքեալ ։ Եւ ոչ լուան ինձ,
եւ ոչ անսացին ունկն նոցա ․ եւ խստա-
ցուցին զպարանոցս [11]իւրեանց՝ առաւել
քան զհարցն" իւրեանց ։
27 Եւ ասասցես զնոսա զբանս զայս, եւ
ոչ լուիցեն քեզ ․ եւ կոչեսցես զնոսա՝
28 եւ ոչ տայցեն քեզ պատասխանի ։ Եւ
ասասցես առ նոսա, Այս ազգ է որ ոչ
լուաւ ձայնի Տեառն Աստուծոյ իւրեանց,
եւ ոչ ընկալաւ զխրատ ․ [12]սպառեցաւ
հաւատք, եւ բարձաւ ճշմարտութիւն"
ի բերանոյ նոցա ։
29 Կտրեա զհերս քո եւ ի բաց ընկեա,
եւ առ զողբս [13]ի շրթունս ․ զի խոտեաց
Տէր եւ մերժեաց զազգն [14]որ առնէր
30 զայս" ։ Զի արարին որդիքն Յուդայ չար
առաջի իմ, ասէ Տէր ․ կարգեցին զգար-
շելիսն իւրեանց ի տանն յորոյ կոչեցեալ

[1] Յոմնք. զոլոսէ [2] Ոմնք. Զերծաք առնել [3] Ոմնք. այդ [4] Ոմնք. Ա՜յ երթայք [5] Ոմնք. յառնելով [6] Ոմնք. տիկնոջն

[7] Ոմնք. Տէր Եհովայ [8] Ոմնք. խորհրդոց. ըստ կամակորութեան [9] Ոմնք. ձեր [10] Ոմնք. յարուցեալ եւ առաքեալ [11] Ոմնք. իւրեանց. արարին չար առաւել քան զհարս [12] Ոմնք. կորեաւ ճշմարտութիւն եւ հաւատ [13] Ոմնք. ի բարձունս [14] Ոմնք. ընդ որում ցասուցեալ էր

էր անուն իմ ի վերայ նորա՝ պղծել զնա ։
31 Եւ շինեցին բագին Տափեթայ, որ է ի
ձոր որդւոյն Ենովմայ, այրել զուստերս
եւ զդստերս իւրեանց ի հուր. զոր ոչ
հրամայեցի նոցա, եւ ոչ զմտաւ ածի ի
32 սրտի իմում։ Վասն այնորիկ ահա ա-
ւուրք եկեսցեն, ասէ Տէր, եւ ոչ եւս
տասցեն ¹Բագին Տափեթայ", եւ Ձոր
որդւոյն Ենովմայ, այլ Ձոր կոտորելոց,
եւ թաղեսցեն ի Տափեթն առ ի անգ-
33 ւոյն չբաւելոյ։ Եւ եղիցին դիակունք
ժողովրդեանդ այդորիկ ի կերակուր
թռչնոց երկնից եւ գազանաց երկրի,
34 եւ ոչ ոք իցէ որ հալածիցէ։ Եւ բարձից
ի քաղաքացն Յուդայ եւ յանցիցն Երու-
սաղեմի զձայն խրախճանաց եւ զձայն
ցնծացելոց, զձայն հարսին եւ զձայն
փեսայի, զի յանապատ եղիցի երկիրն ։

## ԳԼ. Ը

1 Ի ժամանակին յայնմիկ, ասէ Տէր, հան-
ցեն զոսկերս թագաւորացն Յուդայ եւ
զոսկերս իշխանաց նոցա, եւ զոսկերս
քահանայից եւ զոսկերս մարգարէից, եւ
զոսկերս բնակչացն Երուսաղեմի՝ ի գե-
2 րեզմանաց իւրեանց, Եւ ²ցամաքեցուս-
ցեն յարեւու եւ ընդ լուսնով եւ ³ընդ
ամենայն աստեղբք, եւ" առաջի ամե-
նայն զօրութեանց երկնից զոր սիրեցինն՝
եւ որոց ծառայեցինն, եւ որոց զհետ
գնացին, եւ յորս ապաստան լինէին, եւ
երկիր պագանէին նոցա. ոչ ⁴կոծեսցին
եւ ոչ լայցեն, այլ ի նշաւակ եղիցին"
3 ի վերայ երեսաց երկրի. ⁵Զի ախորժե-
ցին զմահ եւ ոչ զկեանս. եւ զմնա-
ցորդս" որ մնացեալ իցեն յազգէ անտի
չարէ, ընդ ամենայն տեղիս մնացելոցն
ուր եւ մերժեցից զնոսա անդր՝ ասէ Տէր
զօրութեանց ։
4 Եւ ասասցես ցնոսա, Այսպէս ասէ
Տէր. Միթէ որ գլորին՝ ո՞չ յառնիցէ.
կամ որ խոտորին՝ ո՞չ եւս դառնայցէ։
5 Արդ ընդէ՞ր խոտորեցաւ ժողովուրդդ
այդ Երուսաղէմ՝ խոտորումն ժպիրհ.
⁶եւ ունդեցան կամօք իւրեանց", եւ ոչ
6 կամեցան դառնալ ։ Ունկն ⁷դիք եւ լուա-
րուք, ոչ այդպէս խօսին", եւ ոչ գոյ
մարդ որ զղջանայ ի չարեաց իւրոց, եւ
ասէ թէ Զի՞նչ գործեցի. ⁸կասեաց ըն-
թացօղն յընթացից իւրոց՝ իբրեւ զձի
ընդ փիրան մտեալ ի խնճել իւրում"։
7 Արդ ⁹արագիլն յերկինս ծանեաւ զժամա-
նակ իւր, տատրակ ¹⁰եւ ծիծառն թռչունք
վայրի պահեցին զժամանակս մտից" իւ-
րեանց, եւ ժողովուրդ իմ ոչ ծանեաւ
8 զիրաւունս Տեառն։ Զիա՞րդ ասիցէք՝ թէ
Իմաստունք եմք, եւ օրէնք ¹¹Աստուծոյ
են ի մեզ. վասն այսորիկ զուր եղեւ
9 սուտ վիճակն գրչացն"։ Յամօթ եղեն
իմաստունքն, զարհուրեցան եւ սար-
սեցան, զի զբան Տեառն անարգեցին.
10 զի՞նչ իմաստութիւն իցէ ի նոսա։ Վասն
այնորիկ տաց զկանայս նոցա այլոց, եւ
զագարակս նոցա օտար ժառանգաց. զի
ի փոքուէ մինչեւ ի մեծամեծս նոցա՝ ա-
մենայն ոք ագահէ զագահութիւն. ի մար-
գարէէ մինչեւ ցքահանայն՝ ամենայն ոք
11 առնէ անիրաւութիւն։ Եւ բժշկէին զբե-
կումն զաւակի ժողովրդեան իմոյ ¹²ընդ ար-
համարհանս". եւ ասէին Խաղաղութիւն,
խաղաղութիւն. եւ ոչ գոյր խաղաղութիւն։
12 Ամաչեցի՞ն զի արարին զպղծութիւն.
սակայն եւ այնպէս ոչ ամաչեցին ամօթով,
եւ զպատկառանս ոչ առին ի միտ. վասն
այնորիկ անկցին ընդ անկեալսն, ի ժա-
մանակի այցելութեան ¹³իւրեանց եւ
13 տկարասցին", ասէ Տէր։ Եւ ¹⁴ժողովեսցեն
զարդիւնս իւրեանց", ասէ Տէր. չի՛ք
խաղող յայգիս նոցա, եւ ոչ թուզ
ի թզենիս նոցա, եւ տերեւն ¹⁵թօթափե-
ցաւ. ետու նոցա՝ եւ անց զնոքօք"։
14 Արդ մեք զի՞ նստիցեմք. այլ ժողո-
վեցարուք՝ եւ մտցուք ի քաղաքս
ամուրս, եւ ¹⁶անդր անկցուք. զի Տէր Ա-
ստուած մեր ընկէց" զմեզ, եւ արբոյց
մեզ ջուր դառնութեան, զի մեղաք ¹⁷ա-
15 ռաջի նորա։ Ժողովեցաք ի խաղաղու-
թիւն", եւ ոչ գոյր բարութիւն. ժամա-
նակի բժշկութեան՝ եւ ահա տագնապ։

---

¹Եբր. Տափեթ ²Եբր. տարածեսցեն զնոսա ³Յեբր. պակասէ ⁴Եբր. ժողովեսցին եւ ոչ թաղեսցին, այլ եղիցին յաղբ ⁵Եբր. Եւ ընտրեսցի մահ քան զկեանս ամենայն մնացորդաց ⁶Եբր. ըմբռնեցան ի խաբս ⁷Եբր. եդի և լուայ, ոչ խօսին ուղիղ

⁸Եբր. ամենայն ոք դարձաւ ի գնացս իւր, իբրեւ զձի որ արշաւէ ի պատերազմ ⁹Եբր. արագիլ ¹⁰Եբր. եւ խորդ եւ ծիծառն պահեցին զժամանակ գալստեան ¹¹Եբր. Տեառն են ի մեզ. արդարեւ աւասիկ ի ստութիւն գործէ եղէգն ստութեան դպրաց ¹²Եբր. հարեւանցի ¹³Եբր. իւրեանց գլորեսցին ¹⁴Եբր. Ջնջելով ջնջեցից զնոսա ¹⁵Եբր. թարշամեսցի, եւ զոր ետու նոցա, անցցէ ի նոցանէ ¹⁶Եբր. անդէն լռեսցուք. զի Տէր Աստուած մեր լռեցոյց ¹⁷Եբր. Տեառն։ (15) Ակն կալաք խաղաղութեան

16 Ի Դանայ [1]լուիցուք զձայն երագութեան՝՝
երիվարաց նորա. ի ձայնէ խրխնջելոյ
հեծելոց նորա շարժեցաւ երկիր ամե-
նայն. եկեսցէ եւ կերիցէ զերկիր լրիւ
իւրով, զքաղաքս եւ զբնակիչս նորա։
17 Զանզի ես առաքից արձակեմ ի ձեզ օձս
կոտորիչս, յորս ոչ մատիցեն թովչու-
թիւնք, եւ հարկանիցեն զձեզ, ասէ Տէր։
18 [2]Եւ յանբժշկականն ցաւս սրտից ձերոց
19 տարտամելոց՝՝ Ահա ձայն աղաղակի դստեր
ժողովրդեան իմոյ յերկրէ հեռաստանէ.
Միթէ Տէր ո՞չ գուցէ ի Սիոն, կամ Թա-
գաւոր անդ ո՞չ իցէ։ Ընդէ՞ր բարկա-
ցուցին զիս դրօշելովք իւրեանց եւ
սնոտուովք օտարոտուովք։
20 Անցին հունձք, անց ամառն, եւ մեք
ոչ փրկեցաք։
21 Ի վերայ բեկման դստեր ժողովրդեան
իմոյ խաւարեցայ, խռովեցայ [3]տարա-
կուսանօք. յաղթահարեցին զիս երկունք
22 իբրեւ ծննդականի՝՝։ Միթէ գեղ ո՞չ գու-
ցէ ի Գաղաադ, կամ բժիշկ ո՞չ կայցէ
անդ. ընդէ՞ր ոչ եղեւ բժշկութիւն դստեր
ժողովրդեան իմոյ։

ԳԼ. Թ

1 Ո՛ տայր գլխոյ իմում ջուր, եւ զաչս
իմ աղբիւրս արտասուաց, եւ լայի [4]զժո-
ղովուրդս զայս՝՝ զտիւ եւ զգիշեր [4]եւ
զվիրաւորեալս դստեր ժողովրդեան ի-
2 մոյ։ Ո՛ տայր ինձ յանապատի [5]դայրն
օթեւանս՝՝, եւ թողուի զժողովուրդ իմ
եւ գնայի ի դոցանէ. զի ամենեքեան
շնան առհասարակ ժողովք արհամար-
3 հողաց։ Եւ լարեցին զլեզուս իւրեանց
իբրեւ [6]զաղեղն. ստութիւն՝ եւ ոչ հա-
ւատք՝՝ զօրացան ի վերայ երկրի. զի ի
չարեաց ի չարիս ելին, եւ զիս ոչ ծա-
4 նեան, ասէ Տէր։ Իւրաքանչիւր յըն-
կերէ իւրմէ զգոյշ լերուք, եւ յեղ-
բարս ձեր մի՛ յուսայք. զի ամենայն
եղբայր խաբելով խաբէ, եւ ամենայն
5 բարեկամ նենգութեամբ գնայ։ Իւ-
րաքանչիւր զբարեկամ իւր [7]այպա-
նեն, եւ ճշմարտութիւն ոչ խօսին.
ուսան լեզուք նոցա խօսել ստութիւն.
[8]զրկեցին, եւ ոչ դադարեցին դառ-
6 նալ վաշխս ի վերայ վաշխից. Եւ նեն-
գութիւն ի վերայ նենգութեանց. եւ՝՝
ոչ կամեցան զիս ճանաչել, ասէ Տէր։
7 Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր զօ-
րութեանց. Ահաւասիկ ես ջեռուցից
զնոսա, եւ փորձեցից զնոսա. զի՞ ա-
րարից [9]յերեսաց չարեաց՝՝ դստեր ժո-
8 ղովրդեան իմոյ։ [10]Բաղխալ խոցոտիչ լե-
զուք նոցա նենգաւորք, եւ՝՝ բան բե-
րանոյ նոցա ընդ ընկերի իւրում խօսի
զխաղաղութիւն, եւ ի սրտի իւրում
9 [11]ունի զթշնամութիւն՝՝։ Միթէ ի վե-
րայ այսոցիկ ո՞չ արարից այցելութիւն,
ասէ Տէր, կամ յազգէ այնպիսւոյ ո՞չ
խնդրեսցէ վրէժ անձն իմ։
10 [12]Լած առէք ի վերայ լերանց, եւ ձայնս
ի վերայ ըլրոց անապատի. ողբացէք,
քանզի սպառեցին առ ի չգոյէ մարդ-
կան անցաւորաց, եւ ոչ լուան զձայնս
ստացուածոց՝՝. ի թռչնոց երկնից մին-
չեւ ցանասունս [13]յիմարեցան եւ՝՝ գնա-
11 ցին։ Եւ տաց զԵրուսաղէմ [14]ի գերու-
թիւն եւ ի բնակութիւն վիշապաց, եւ
զքաղաքս Յուդայ եղից յապականու-
12 թիւն՝ առ ի չգոյէ բնակչաց։ Ո՞վ է այր
իմաստուն՝ եւ ի միտ առցէ զայս, եւ
առ ո՞ւմ բան բերանոյ [15]Տեառն, պատ-
մեսցէ մեզ թէ վասն է՞ր կորեաւ եր-
կիր, [16]լքաւ իբրեւ զանապատ առ ի չգոյէ
13 անցաւորաց։ Եւ ասէ ցիս Տէր, Վասն
թողլոյն դոցա զօրէնս իմ զոր եդի ա-
ռաջի աչաց նոցա, եւ ոչ լուան ձայնի
14 իմում[17]. Եւ գնացին զհետ հաճոյից սրտից
իւրեանց [18]չարաց, եւ զհետ կռոցն՝՝ զոր
ցուցին նոցա հարքն նոցա։
15 Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր զօ-
րութեանց՝ Աստուած Իսրայէլի. Ահա-
ւասիկ ես ջամբեմ ժողովրդեանդ այդ-
միկ [19]լեղանդ, եւ արբուցանեմ զդոսա
16 ջուր դառնութեան։ Եւ ցրուեցից զդո-
սա ընդ ազգս զորս ոչ գիտացին զոքա

[1] Եբր. լու եղեւ փնչիւն [2] Եբր. Ո՞ցի՜ սփոփէի ի վերայ ցաւոց, սիրտ իմ նուաղեցաւ յիս։ [3] Եբր. ապշութիւն կալաւ զիս [4] Յ Եբր. գ—լ—է [5] Եբր. օթեւան ուղեւորաց [6] Եբր. զաղեղն ի ստութիւն, եւ ոչ վասն ճշմարտութեան, [7] Կամ. պատրէ

[8] Եբր. վաստակեցան ի գործել զանօրէնութիւն (6) Նիստ քո ի մէջ նենգութեան, առ նենգութեան [9] Եբր. վասն [10] Եբր. Նետ մահացու լեզու նոցա, խօսի զնենգութիւն. [11] Եբր. դնէ դաւ [12] Եբր. վասն լերանց առից ողբ եւ կոծ, եւ վասն արօտից անապատի՝ ոչխար, զի այրեցան մինչեւ չանցանել մարդոյ, եւ ոչ լսի բարբառ խաշանց [13] Եբր. խոյս տուեալ [14] Եբր. ի կոյտս [15] Եբր. Աստուծոյ [16] Եբր. այրեցաւ [17] Եբր. —յէջէն յ—ե—լ—, եւ ոչ գնացին ի նոսա [18] Եբր. եւ զհետ Բահաղիմայ [19] Եբր. աւշինդր

եւ ոչ հարքն իւրեանց. եւ արձակեցից ի
վերայ զոցա սուր, մինչեւ սատակեցից
զզոսա [1]նովաւ։
17 Այսպէս ասէ Տէր զօրութեանց. Զմտա-
ածէք, եւ կոչեցէք զձայնարկուս եւ ե-
կեսցեն, եւ առ իմաստուն կանայս ա-
18 ռաքեցէք, եւ [2]ճչեսցեն, Եւ ստիպեսցեն
եւ առցեն ողբս ի վերայ [3]ձեր. եւ ի-
ջուսցեն աչք [3]ձեր արտասուս, եւ
19 արտեւանունք [3]ձեր բղխեսցեն ջուր։ Զի
ձայն ողորմ զուժեաց ի Սիոնէ, Զիա՞րդ
թշուառացաք, ամաչեցաք յոյժ, զի լքաք
զերկիր եւ [4]ընկեցաք զբնակութիւնս
20 մեր։ Լուարուք, կանայք, զպատգամս
Տեառն [1]Աստուծոյ, եւ ընկալցին ականջք
ձեր զբանս բերանոյ նորա. եւ ուսու-
ցէք դստերաց ձերոց ձայնս, եւ կին՝
21 ընկերի իւրում ողբս. Զի ել մահ ընդ
պատուհանս [3]ձեր, եւ եմուտ [5]յերկիր
ձեր", ջնջել զտղայս արտաքուստ եւ
22 զերիտասարդս ի հրապարակաց։ [6]Այս-
պէս ասէ Տէր. Եղիցին դիակունք մարդ-
կան [7]նշաւակ ընդ երեսս դաշտաց [8]երկ-
րի ձերոյ, եւ իբրեւ զխոտ" զկնի հնձօ-
ղի. եւ ոչ ոք իցէ որ ժողովիցէ։
23 Այսպէս ասէ Տէր. Մի՛ պարծեսցի ի-
մաստունն յիմաստութիւն իւր, եւ մի՛
պարծեսցի հզօրն ի զօրութիւն իւր, եւ
մի՛ պարծեսցի մեծն ի մեծութիւն իւր.
24 Այլ յայն պարծեսցի որ պարծիցին՝
իմանալ եւ ճանաչել զիս, թէ ես
եմ Տէր, որ առնեմ զիրաւունս եւ
զողորմութիւն, եւ զարդարութիւն ի
վերայ երկրի. եւ ի նոյնս են կամք իմ,
25 ասէ Տէր։ Ահա աւուրք եկեսցեն, ասէ
Տէր, եւ արարից այց ի վերայ ամե-
նայն թլփատելոց յանթլփատութեան ի-
26 րեանց, Ի վերայ Եգիպտոսի եւ ի վե-
րայ Յուդայ եւ ի վերայ Եդովմայ եւ ի
վերայ որդւոցն Ամոնայ եւ ի վերայ
որդւոցն Մովաբու, եւ ի վերայ ամենայն
յապաւելոցն զերեսօք բնակչաց անա-
պատի. զի ամենայն ազգք անթլփատ
են մարմնով, եւ ամենայն տունն Ի-
սրայելի անթլփատ են սրտիւք իւրեանց։

Գլ. Ժ

1 Լուարուք զպատգամս զոր խօսեցաւ
Տէր ի վերայ ձեր, տունդ Իսրայելի։
2 Այսպէս ասէ Տէր. Ըստ ճանապարհաց
հեթանոսաց մի՛ ուսանիք, եւ ի նշանաց
երկնից մի՛ զարհուրիք. զի [9]նոքա երկն-
3 չին յերեսաց նոցա։ Զի [1]ամենայն օրէնք
հեթանոսաց ունայնք են, փայտ յան-
տառէ հատեալ, գործք ձեռաց հիւսանց[10].
4 Զայլ արծաթոյ եւ ոսկւոյ զարդարեալք.
ուռամբք եւ բեւեռօք հաստատեցին զնո-
5 սա՝ զի ոչ շարժեսցին. [11]Արծաթ ճախա-
րակեալ, արծաթ ի գործ արկեալ ի
Թարշշէ, եւ ոսկի եկեալ ի Մեմփաթայ.
եւ ձեռն ոսկերչի գործեալ գործ ճար-
տարաց. կապուտակ եւ ծիրանի զգե-
ցուցանեն նոցա. եւ ոչ գնասցեն, այլ
բառնալով բարձցին. եւ ոչ քայլ մի ո-
տին փոխեսցեն, եւ ոչ ինքնին ի կրե-
լեան ամբարձցին." մի՛ երկնչիք ի նո-
ցանէ, զի ոչ չար առնեն, բարի իսկ ոչ
գոյ ի նոսա։
6 Զի՞ ոք իբրեւ զքեզ, Տէր. մեծ ես,
7 եւ մեծ է անուն քո զօրութեամբ։ Ո՞
ոչ երկիցէ ի քէն, Թագաւոր ազգաց.
զի քեզ իսկ վայելէ. զի յամենայն ի-
մաստունս հեթանոսաց եւ յամենայն
[12]թագաւորս նոցա ո՞վ է իբրեւ զքեզ։
8 Եւ միանգամայն [13]այրեսցին, եւ սատա-
9 կեսցին սիրտք ունայնաց. Զի փայտ են,
եւ արծաթ ընտիր" եկեալ ի Թարշշայ,
եւ ոսկի ի Սոփփաթայ, գործ ճարտա-
րաց [1]ամենայն, եւ ձեռաց ոսկերչաց.
կապուտակ եւ ծիրանի հանդերձն նո-
10 ցա, գործ իմաստնոց ամենայն։ Այլ Տէր
Աստուած ճշմարիտ է, Աստուած կեն-
դանի, եւ Թագաւոր յաւիտենական.
ի սրտմտութենէ նորա շարժեսցի եր-
կիր, եւ ոչ հանդարտեսցեն ազգք բար-
11 կութեան նորա։ Եւ այսպէս ասասջիք
ցնոսա. Աստուածք որ զերկինս եւ զեր-
կիր ոչ արարին՝ կորիցեն յերկրէ, եւ ի
12 ներքոյ երկնիցս այսոցիկ։ Տէր է որ ա-
րար զերկիր զօրութեամբ իւրով, եւ
կանգնեաց զտիեզերս իմաստութեամբ

[1] ՅԵբր. գոլով [2] Եբր. եկեսցեն [3] Եբր. մեր [4] Եբր. ընկեցին [5] Եբր. յապարանս մեր [6] Եբր. Խօսեաց, այսպէս [7] Եբր. իբրեւ զաղբ [8] Եբր. եւ իբրեւ գորայ

[9] Եբր. հեթանոսք [10] Եբրայեցին յաւելու, տապարաւ [11] Եբր. Իբրեւ զարմաւենի կանգուն են նոքա, եւ ոչ խօսին. այլ բառնալով բարձցին, զի ոչ կարեն գնալ. [12] Եբր. թագաւորութիւնս [13] Եբր. յիմարեսցան եւ անմտութեամբ գործեցին. ուսումն ունայնաց փայտ իսկ է։ (9) Արծաթ ծեծեալ

իւրով, եւ խորհրդով իւրով ձգեաց զեր-
13 կինս. Եւ ի տալոյ զձայն իւր՝ լինէ բազ-
մութիւն ջուրցն յերկինս. հանէ զամպս
ի ծագաց երկրէ, եւ զփայլատակունս
իւր յանձրեւս արար, հանէ զհողմս
14 յշտեմարանաց իւրոց։ Ցիմարեցաւ ա-
մենայն մարդ ի գիտութենէ. ամօթ եղեն
ամենայն ոսկերիչք դրօշելովք իւրեանց.
զի սուտ ձուլեցին, եւ չիք շունչ ի նո-
15 սա։ Ունայն են եւ գործք խաբէու-
թեան. ի ժամանակի այցելութեան իւ-
16 րեանց կորիցեն։ Այլ ոչ այնպիսի ինչ
է Բաժինն Յակոբայ. զի որ ստեղծն զա-
մենայն՝ նա է [1]բաժին նորա", եւ Իս-
րայէլ գաւազան ժառանգութեան նո-
րա. Տէր զօրութեանց անուն է նորա։
17 Ժողովեա [2]ի բացուստ զկօրութիւն"
18 քո, բնակեալդ ի մէջ [3]ընտրելոց։ Զի այս-
պէս ասէ Տէր. Ահաւասիկ ես քարըն-
զոտնեմ զբնակիչս երկրիդ այդորիկ [4]նե-
ղութեամբ, եւ նեղեցից զնոսա զի մի՛
19 զացեն։ [5]Վա՜յ ի վերայ բեկման [6]քո, զի
ցաւագին են հարուածք [7]քո. եւ ասեմ,
Արդարեւ այդ խոց են վէրք իմ, եւ [8]ե-
20 հաս յիս։ Խորանն իմ չուառացաւ, կո-
րեաւ, եւ ամենայն խորանափեղկք իմ
քակեցան. որդիք իմ եւ խաշինք իմ
ոչ ուրեք են, եւ ոչ եւս գոյ տեղի խո-
րանի իմոյ, եւ ոչ տեղի խորանափեղ-
21 կաց իմոց։" Զի հովիւքն անմտացան,
եւ զՏէր ոչ խնդրեցին. վասն այնորիկ
ոչ իմացան, եւ ամենայն [9]արօտականքն,
22 եւ" ցրուեցան։ Ձայն զուժի [10]եկեալ է,
եւ շարժումն մեծ յերկրէ հիւսիսոյ,
կարգել զքաղաքս Յուդայ յապականու-
թիւն եւ ի դադարս [11]ջայլամանց։
23 Գիտեմ, Տէր, զի ոչ մարդոյ է ճա-
նապարհ իւր. եւ ոչ [12]այր գնասցէ եւ
24 յաջողեսցէ զճանապարհս" իւր։ Խրա-
տեա [13]զմեզ, Տէր, բայց իրաւամբք, եւ
մի՛ ցասմամբ. զի մի՛ սակաւաւորս ա-
25 րասցես [13]զմեզ։ Հեղ զբարկութիւն քո
ի վերայ հեթանոսաց որ ոչ գիտեն զքեզ,
եւ ի վերայ ազգաց որ զանուն քո

[1] Յեբր. դ–ժառն [2] Եբր. յերկրէ զվաճառս [3] Եբր. ամրութեանց [4] Եբր. զայս նուագ [5] Եբր. Վա՜յ ինձ [6] Եբր. իմոյ [7] Եբր. իմ [8] Եբր. տարայց այնմ։ (20) Խորանն իմ կործանեցաւ, և ամենայն ապաւանդակք իմ քակտեցան, որդիք իմ հանեան յինէն եւ ոչ գոն. չիք որ կանգնիցէ այսուհետեւ զխորան իմ, եւ զետեղեսցէ զվարագոյրս իմ։ [9] Եբր. արօտականք նոցա [10] Եբր. ահա գայ [11] Եբր. վիշապաց [12] Եբր. առն որ գնայ՝ ուղղել զգնացս [13] Եբր. զիս

ոչ կարդացին. զի կերան զՅակոբ եւ
սպառեցին զնա, եւ վախճանեցին զնա,
եւ [14]զարօտս նորա աւերեցին։

## ԳԼ. ԺԱ

1 Բանն որ եղեւ առ Երեմիա ի Տեառնէ եւ
2 ասէ, Լուարուք զբանս ուխտիս այսո-
րիկ, եւ խօսեցարուք ընդ արս Յու-
3 դայ եւ ընդ բնակիչս Երուսաղեմի. Եւ
ասասցես ցնոսա, Այսպէս ասէ Տէր Ա-
ստուած Իսրայէլի. Անիծեալ լիցի մարդն
որ ոչ լուիցէ բանից ուխտիս այսորիկ,
4 Զոր պատուիրեցի հարցն ձերոց, յա-
ւուր յորում հանի զնոսա յերկրէն Ե-
գիպտացւոց՝ ի հնոցէ երկաթոյն. եւ ա-
սեմ, Լուարուք ձայնի իմում, եւ ա-
րարէք ըստ ամենայնի զոր ինչ պա-
տուիրեմ ձեզ, եւ եղիջիք ինձ ի ժո-
ղովուրդ, եւ ես եղէց ձեզ յԱստուած։
5 Եւ հաստատեցից զերդումն իմ զոր եր-
դուայ հարցն ձերոց, տալ նոցա զեր-
կիրն որ բղխէ զմեղր եւ զկաթն, որպէս
եւ այսօր։ Պատասխանի ետու եւ ա-
սեմ, Այո, Տէր, եղիցի։
6 Եւ ասէ ցիս Տէր, [15]Ընթերցիր զամենայն
զբանս զայդոսիկ ի քաղաքս Յուդայ
եւ [16]արտաքոյ Երուսաղեմի, եւ ասասցես,
Լուարուք զպատգամ ուխտիդ այդորիկ,
7 եւ արարէք զդոսա. Զի վկայութեամբ
եդի վկայութիւն հարցն ձերոց՝ յաւուրն
հանելոյ իմոյ զնոսա յերկրէն Եգիպ-
տացւոց մինչեւ ցայսօր. կանխել ընդ
առաւօտս եւ դնել վկայութիւն եւ ասել,
8 Լուարուք ձայնի իմում. Եւ ոչ լուան,
եւ խոտորեցուցին զականջս իւրեանց,
եւ գնացին այր ըստ յօժարութեան սրտից
իւրեանց ի չարին. եւ ածից ի վերայ
նոցա զամենայն բանս ուխտիս այսորիկ
զոր պատուիրեցի նոցա առնել եւ ոչ
9 արարին։ Եւ ասէ ցիս Տէր, Գտաւ [17]կնճիռ
յարս Յուդայ եւ ի բնակիչս Երուսա-
10 ղեմի. Դարձան յանիրաւութիւնս հարցն
իւրեանց առաջնոց, որք ոչ կամեցան
լսել բանից իմոց. եւ ահաւադիկ եր-
թան զհետ աստուածոց օտարաց ծա-
ռայել նոցա. եւ ցրեցին տունն Իսրա-
յէլի եւ տունն Յուդայ զուխտն իմ, զոր
ուխտեցի ընդ հարս նոցա։
11 Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր. Ա-
հաւադիկ ես ածից ի վերայ դոցա չա-

[14] Կամ, զբնակութիւն [15] Եբր. Քարոզեա [16] Կամ, ի հրապարակս [17] Կամ, դաւաճանութիւն

րիս, յորոց ոչ կարասցեն ելանել. և
աղաղակեսցեն առ իս, և ոչ լուայց նո-
12 ցա։ Եւ գնասցեն քաղաքք Յուդայ և
բնակիչք Երուսաղեմի, և աղաղակես-
ցեն առ դիսն իւրեանց որոց արկանէին
խունկս, և փրկելով ոչ փրկեսցեն զնո-
13 սա ի ժամանակի չարեաց իւրեանց։ Զի
ըստ թուոյ քաղաքացն քոց էին դիքն
քո, Յուդա, և ըստ թուոյ անցիցն Ե-
րուսաղեմի կարգեցէք բագինս [1]և սե-
ղանս ամօթոյ," արկանել խունկս Բա-
14 հաղու։ Եւ դու մի՛ կար յաղօթս վասն
ժողովրդեանդ այդորիկ, և մի՛ աղա-
չեր վասն դոցա խնդրուածովք և աղա-
ւօթիւք. զի ոչ լսեմ ի ժամանակի յո-
րում կարդասցեն առ իս, ի ժամանակի
չարեաց իւրեանց։
15 [2]Զի ընդ սիրելին ասեմ՝ զի ի ներքս ի
տաճարին իմում արար զարշելիս. մի-
թէ աղօթք և միս նուիրեա՞լ անցու-
ցանիցեն ի քէն զչարիս քո, կամ թէ
16 այնուիկե՞ք ապրիցիս։" Զիթենի գեղե-
ցիկ վայրաւոր ստուերամբ[3] կոչեաց Տէր
զանուն քո. [4]ի ձայնէ թլփատութեան
նոցա՝ մեծ է նեղութիւն ի վերայ քո,
17 անպիտանացան ոստք քո։ Եւ Տէր Աս-
տուած" զօրութեանց որ տնկեաց զքեզ՝
խօսեցաւ ի վերայ քո չարիս փոխանակ
չարեաց տանն Իսրայէլի, և տանն Յու-
դայ. զի արարին անձամբ անձանց ի
բարկացուցանել զիս, յարկանել նոցա
խունկս Բահաղու։
18 Տէր [5]ծանո ինձ և ծանեայց. յայն-
19 ժամ տեսի" զգործս նոցա։ Ես իբրև
զգառն [6]անմեղ վարեալ ի զոհել, ոչ
գիտացի թէ զինէն խորհեցան խորհուրդ
չար և ասեն, [7]Եկայք արկցուք փայտ
ի հաց նորա", և ջնջեսցուք զնա յերկ-
րէն կենդանեաց, և անուն նորա մի՛
20 ևս յիշեսցի։ Տէր զօրութեանց, որ
ընտրես զիրաւունս, և քննես զերի-
կամունս և զսիրտս, տեսից առ ի քէն
զվրէժխնդրութիւն առ ինոսա. զի քեզ
յայտնեցի զիրաւունս իմ։

21 Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր ի
վերայ արանցն Անաթովթայ որ խնդրեն
զանձն քո, և ասեն՝ Մի՛ մարգարէա-
նար [8]վասն մեր", ապա թէ ոչ՝ մեռա-
22 նիս ի ձեռաց մերոց։ Վասն այդորիկ
այսպէս ասէ Տէր զօրութեանց. Ահա-
ւասիկ ես այց արարից ի վերայ նոցա.
երիտասարդք նոցա սրով մեռցին, և
ուստերք և դստերք նոցա սովով վախ-
23 ճանեսցին. Եւ մնացորդք ոչ եղիցին
նոցա. զի ածից չարիս ի վերայ բնակ-
չացն Անաթովթայ յամի այցելութեան
նոցա։

## ԳԼ. ԺԲ

1 Արդար ես դու, Տէր, [9]և մատուցից
առաջի քո ատեան". բայց խօսեցայց զի-
րաւունս[10]. զի՞ է զի ճանապարհք ամ-
պարշտաց յաջողեալ են, և երջանկա-
ցան ամենեքեան որ արհամարհեն զար-
2 համարհանս։ Տնկեցեր զնոսա և ար-
մատացան, [11]ծնան որդիս" և արարին
պտուղ. մերձ ես դու, Տէր, ի բերանս
3 նոցա, և հեռի յերիկամանց նոցա։ Եւ
դու, Տէր, գիտես զիս, տեսեր զիս՝ և
փորձեցեր զսիրտ իմ առաջի քո. [12]ժո-
ղովեա զնոսա իբրև զոչխար ի սպա-
նումն, և նուիրեա զնոսա յաւուր
4 սպանման։ Մինչև յե՞րբ սուգ ունիցի
երկիր, և խոտ ամենայն վայրի ցա-
մաքեսցի. ի չարեաց բնակչաց երկրին
ապականեցան անասունք և թռչունք. զի
ասացին թէ Ոչ տեսցէ [13]Աստուած զճա-
նապարհս մեր։
5 Ոտք քո ընթանան՝ և լքուցեն զքեզ.
զիա՞րդ կաղմիցիս երիվարօք". իսկ արդ
յերկրի խաղաղութեան յուսացեալ ես,
զի՞ գործիցես ի վերանալ Յորդանան գե-
6 տոյ։ Քանզի և եղբարքն քո և տունն
հօր քո, և նոքա զաւեցին քեզ, և
նոքին աղաղակեցին զկնի քո, կուտե-
ցան ի վերայ քո. մի՛ հաւատար նոցա
[14]զի խօսեցին զքէն չարութիւն։"
7 Լքի զտունն իմ, թողի զժառանգու-
թիւն իմ, ետու զսիրելին անձին իմոյ
8 ի ձեռս թշնամեաց իւրոց։ Եղև ժա-

[1]Եբր. ամօթոյ, սեղանս [2]Եբր. Զի՞ կայ սիրելւոյ իմոյ և տան իմոյ, զի արար գարշելիս ընդ բազումս. և միս սրբութեան անց զքև, զի ընդ չարիս քո այնպէս ուրախ եղեր։ [3]Եբր.-յէ-յէն յ—էլ—, պտղոյն [4]Եբր. ի ձայն բարբառոյ մեծի եբոյց հուր ի վերայ նորա. բեկան ոստք նորա։ (17) Եւ Տէր [5]Եբր. ծանոյց ինձ և ծանեայ. յայնժամ ցուցեր [6]Եբր. զգօն [7]Եբր. Կործանեսցուք զծառն հանդերձ պտղովն իւրով

[8]Եբր. յանուն Տեառն [9]Եբր. յորժամ դատեցայց ընդ քեզ [10]Եբր.-յէ-յէն յ—էլ—, առ քեզ [11]Եբր. աճեցին [12]Եբր. զատո [13]Եբր. զվախճան մեր։

(5) Զի դու ընդ հետևակն ընթացար և աշխատ արարին զքեզ. զիա՞րդ մարտիցես ընդ հեծեալս [14]Եբր. եթէ խօսեցին զքէն բարութիւն

ռանգութիւն իմ ինձ իբրեւ առեւծ ¹յա-
նտառի. ետ ի վերայ իմ զբարբառ
9 իւր, վասն այնորիկ ատեցի զնա։ Մի-
թէ ²այր բորենւո՞յ իցէ ժառանգութիւն
իմ ինձ, ³կամ այրք՞ շուրջ զնովաւ. շրջե-
ցարուք ժողովեցէք զամենայն գազանս
անտառի, եւ եկեսցեն ուտել զնա։
10 Հովիւք բազումք ապականեցին զայգի
իմ, եղծին զբաժին իմ. արարին զվի-
ճակն իմ ցանկալի յանապատ անկոխ։
11 ⁴Եդաւ յապականութիւն կորստեան.
վասն իմ ապականեցաւ ապականու-
թեամբ ամենայն երկիր," զի ոչ գոյ մարդ
12 որ դնէ ի սրտի։ Ընդ ամենայն ելս ա-
նապատի ⁵անցին թշուառացեալք". զի
սուր Տեառն կերիցէ ի ծագաց մինչեւ
ի ծագս երկրի, եւ ոչ գոյ խաղաղու-
13 թիւն ամենայն մարմնոյ։ ⁶Ցորեան սեր-
մանեցէք, եւ փուշ հնձեսջիք. եւ վի-
ճակքն ձեր ոչ եկեսցեն ձեզ յօգուտ. յա-
մօթ լերուք ի պարծանաց ձերոց՝ ի նա-
խատանաց առաջի Տեառն։"
14 Զի այսպէս ասէ Տէր վասն ամենայն
դրացեացդ չարաց որ մերձենան ի ժա-
ռանգութիւն իմ, զոր բաշխեցի ժո-
ղովրդեան իմում Իսրայէլի. Ահաւասիկ
ես կորզեցից զնոսա յերկրէն իւրեանց,
եւ զտունն Յուդայ հանից ի միջոյ նո-
15 ցա։ Եւ եղիցի յետ հանելոյն զնոսա՝
դարձայց եւ ողորմեցայց նոցա. եւ բնա-
կեցուցից զնոսա իւրաքանչիւր ի ժա-
ռանգութեան իւրում, եւ իւրաքան-
16 չիւր յերկրի իւրում։ Եւ եղիցի եթէ ու-
սանելով ուսանիցին զճանապարհս ժո-
ղովրդեան իմոյ, երդնուլ յանուն իմ թէ
կենդանի է Տէր, որպէս ուսուցին զժո-
ղովուրդ իմ երդնուլ ի Բահաղ, եւ շի-
17 նեսցին ի մէջ ժողովրդեան իմոյ։ Եւ
եթէ ոչ ⁷դառնայցեն, ջնջեցից զազգն
զայն, եւ բարձից կորստեամբ, ասէ Տէր։

## ԳԼ. ԺԳ

1 Այսպէս ասէ ցիս Տէր. Գնա եւ ստա-
ցիր քեզ ⁸ախածանելի կտաւի, եւ ած
զմիջով քով. եւ ընդ ջուր մի՛ անցանի-
2 ցես։ Եւ ստացայ ախածանելի ըստ բա-
3 նին Տեառն, եւ ածի զմիջով իմով։ Եւ
եղեւ բան Տեառն առ իս կրկին անգամ,
4 եւ ասէ, Առ զախածանելիդ, զոր ստա-
ցար, ի միջոյ քումմէ, եւ արի գնա յափն
Եփրատու, եւ թաքուսջիր զդա անդ ի
5 ծակ վիմի։ Եւ չոգայ եւ թաքուցի զնա
յԵփրատ, որպէս պատուիրեաց ինձ Տէր։
6 Եւ եղեւ յետ բազում աւուրց ասէ ցիս
Տէր, Արի գնա յափն Եփրատայ, եւ առցես
անտի զախածանելին զոր հրամայեցի քեզ
7 անդ թաքուցանել։ Եւ գնացի յափն Եփրատ
գետոյ, փորեցի եւ առի զախածանելին
ի տեղւոջէն ուր թաղեցի զնա անդ. եւ
ահա ապականեալ էր ախածանելին, եւ
8 ահա չէր ինչ իմիք պիտանացու։ Եւ
9 եղեւ բան Տեառն առ իս՝ եւ ասէ, Այս-
պէս ասէ Տէր. Այսպէս ապականեցից
զհպարտութիւն Յուդայ եւ զհպարտու-
10 թիւն Երուսաղեմի։ ⁹Զքաղաքն եւ զժո-
ղովուրդն իմ" չար՝ որք ոչ կամին լսել
բանից իմոց, որք գնան ըստ յօժարու-
թեան սրտից իւրեանց չարաց, եւ եր-
թան զհետ աստուածոց օտարաց ծառա-
յել նոցա եւ երկիր պագանել, եղի-
ցին իբրեւ զախածանելիդ զայդ՝ որ ոչ
11 իմիք է պիտանացու։ Զի զոր օրինակ
մածանի ախածանելի զմիջով մարդոյ,
նոյնպէս մածուցի զինեւ զամենայն
տունդ Իսրայէլի, եւ զամենայն տունդ
Յուդայ, ասէ Տէր, լինել ինձ ժողո-
վուրդ անուանի եւ ի պարծանս եւ ի
փառս. եւ ոչ անսացին ինձ։
12 Եւ ասասցես ժողովրդեանդ զպատ-
գամդ զայդ. Այսպէս ասէ Տէր Աստուած
Իսրայէլի. Ամենայն տիկ զինւով լցցի.
եւ եղիցի եթէ ասիցեն ցքեզ, Միթէ
չգիտիցե՞մք գիտելով, եթէ ամենայն
13 տիկ զինւով լցցի։ Եւ ասասցես ցնոսա,
Այսպէս ասէ Տէր. Ահա ես լնում զա-
մենայն բնակիչս երկրիդ այդորիկ, եւ
զթագաւորս ¹⁰որդիս Դաւթի որ նստին
յաթոռ նորա, եւ զքահանայս եւ զմար-
գարէս, ¹⁰եւ զՅուդա" եւ զամենայն
բնակիչս Երուսաղեմի արբեցութեամբ։
14 Եւ ցրուեցից զդոսա՝ զայր եւ զեղբայր
իւր, զհայր եւ զորդիս իւրեանց ի միա-
սին, ասէ Տէր. ոչ զթացայց եւ ոչ

¹ Եբր. անտառի ² Եբր. Թռչուն գիշատիչ նկարէ՞ն ³ Եբր. Թռչուն գիշատի՞չ ⁴ Եբր. Եդին զնա յամայութիւն. ողբացաւ ի վերայ իմ ամայացեալ. ամայացեալ է ամենայն երկիր. ⁵ Եբր. եկին աւարառուք ⁶ Եբր. Սերմանեցին ցորեան, եւ փուշ հնձեցին. աշխատ եղեն, եւ չեղեւ նոցա յօգուտ. յամօթ լերուք ընդ արդիւնս ձեր վասն բարկութեան սրտմտութեան Տեառն։ ⁷ Եբր. լուիցեն

⁸ Եբր. գօտի, այսպէս եւ ի ներքոյ ⁹ Եբր. Ժողովուրդս այս ¹⁰ Յեբր. պակասէ

խնայեցից, և ոչ ողորմեցայց ապակա-
նել զդոսա։
15 Լուարուք և ունկնդիր լերուք, և
16 մի՛ հպարտանայք զի Տէր խօսեցաւ։ Տուք
Տեառն Աստուծոյ ձերում փառս, մինչ-
չև խաւարեալ և գայթակղեալ ոտից
ձերոց ի վերայ խաւարին լերանց, ակն
ունիցիք լուսոյ, և [1]անդ ստուերք մա-
17 հու, և դնիցին ի խաւարի"։ Եւ եթէ
ոչ լսիցէք նմա, գաղտագողի [2]լայցէ
անձն իմ ձեր յերեսաց թշնամեաց, և
արտասուալից լիցէք արտասուօք. և ի-
ջուսցեն աչք ձեր արտասուս, զի խոր-
տակեցաւ հօտն Տեառն։
18 Ասացէք ցթագաւորն և ցիշխա-
նաւորսն", թէ Կորացարուք և նստարուք,
զի անկաւ ի գլխոց ձերոց պսակ փա-
19 ռաց ձերոց։ Փակեցան քաղաքք որ ընդ
հարաւակողմն, և ոչ ոք էր որ բա-
նայր. գերեցաւ Յուդա [3]զկախճանեալ գե-
րութիւն, զկատարեալն հատուցմանց։
20 Ամբարձ զաչս քո, Երուսաղէմ, և տես
զարձակեալսդ" ի հիւսիսոյ. ո՞ւր է հօտն
որ տուաւ ցքեզ, խաշինք փառաց քոց։
21 Զինչ ասասցես պատասխանի ի ժամանա-
կի յորում [4]պահանջիցեն ի քէն". դու
իսկ ուսուցեր զնոսա ուսումն՝ տիրել ի
վերայ քո. ո՞չ ահա երկունք ունիցին
22 զքեզ իբրև կնոջ ծննդականի։ Եւ ե-
թէ ասիցես ի սրտի քում, թէ Ընդէ՞ր
պատահեաց ինձ այս. վասն բազմու-
թեան անիրաւութեան քո՝ յայտնեցաւ
յետուստ քո խայտառակել զկրկունս
23 քո։ Եթէ փոխիցէ [5]Հնդիկ զմորթ իւր
և ինձ զխայտուցս իւր, և դուք կա-
րող լինիցիք գործել զբարիս՝ ուսեալք
24 զչարիս։ Եւ ցրուեցից զնոսա իբրև
25 զխիւ հողմակոծեալ յանապատի։ Այդ
է վիճակ քո և մասն՝ [6]չհաւանելոյ ձեզ
ինձ". զի մոռացար զիս և յուսացար ի
26 ստութիւնս։ Եւ ես մերկացից զյետուստ
քո, և արկից զգլխով քո և զերեսօք, և
27 երևեսցին անարգանք քո. [7]Շնութիւն
և վրնջիւն քո, և օտարանալն յի-
նէն պոռնկութեամբ քով, ի բաղինս և
յանդս տեսի զգարշելիս քո։ Վա՜յ քեզ,
Երուսաղէմ, զի ոչ սրբեցիր զկնի իմ.
մինչև ցե՞րբ լիցէ քեզ այդ։"

ԳԼ. ԺԴ

1 Եւ եղև բան Տեառն առ Երեմիա վասն
2 երաշտութեանն անձրևւ։ Սուգ առ Հրէաս-
տան, և դրունք նորա թափուր եղեն.
խաւարեցան ի վերայ երկրի; և աղա-
3 ղակն Երուսաղեմի բարձրացաւ։ Եւ մե-
ծամեծք նոցա առաքեցին զկրտսերս
իւրեանց զջրոյ. եկին ի ջրհորս, և ոչ
գտին ջուր, դարձուցին ունայն զամանս
իւրեանց. ամաչեցին, յամօթ եղեն և
4 ծածկեցին զգլուխս իւրեանց։ [8]Եւ գործ
երկրին պակասեաց", զի ոչ գոյր անձ-
րև ի վերայ երկրի, յամօթ եղեն մշակք,
5 ծածկեցին զգլուխս իւրեանց։ Եղինք ի
վայրի ծնան, և թողին զծնունդս, զի
6 ոչ գոյր բանջար։ Եւ ցիռք [9]ի դաշտս
ծծեցին զօդս իբրև զվիշապս, և ստ-
րեցին աչք իւրեանց, զի ոչ գոյր խոտ։
7 Եթէ մեղք մեր հակառակ կացին մեզ,
դու, Տէր, արա վասն անուանդ քո. զի
բազում են մեղք մեր առաջի քո. քեզ
8 մեղաք։ Ակնկալութիւնդ Իսրայէլի,
[10]Տէր, փրկեա զմեզ" ի ժամանակի չա-
րեաց, ընդէ՞ր եղեր իբրև պանդուխտ
յերկրի, կամ իբրև [11]զբնակ երկրի" որ
9 դառնայցէ յօթեվանս։ Մի՛թէ լիցի՞ս իբ-
րև զմարդ [12]որ ննջէ", կամ իբրև զայր
որ ոչ կարէ ապրեցուցանել. և դու ի
միջի մերում ես, Տէր, և անուն քո
կոչեցեալ է ի վերայ մեր. մի՛ մոռա-
նար զմեզ։
10 Այսպէս ասէ Տէր ժողովրդեանդ այդ-
միկ. Այնպէս սիրեցին շարժել զոտս
իւրեանց և ոչ խնայեցին. և [13]Աստուած
ոչ հաճեցաւ ընդ նոսա. արդ յիշեսցէ
զանիրաւութիւնս նոցա, և այց արաս-
11 ցէ մեղաց նոցա։ Եւ ասէ ցիս Տէր, Մի՛
կար յաղօթս վասն ժողովրդեանդ այ-

---

[1] Եբր. Նա դարձուցէ զայն ի ստուեր մահու, դարձուցէ յաղջամուղջ [2] Եբր. լացցէ անձն իմ յերեսաց հպարտութեան ձերոյ. և արտասուելով արտասուեսցէ և իջուսցեն աչք իմ արտասուս. զի վարեալ եղև հօտն Տեառն։ (18) Ասա ցթագաւորն և ցիշխողն [3] Եբր. ողջ բովանդակ, գերեցաւ համօրէն։ (20) Ամբարձէք զաչս ձեր և տեսէք զոր գայն [4] Եբր. այց արասցէ քեզ [5] Եբր. Եթովպացին [6] Եբր. սահմանեալ քեզ յինէն, ասէ Տէր

[7] Եբր. Զշնութիւն քո և զվրնջիւն քո, զկատութիւն պոռնկութեան քո, զպղծութիւնն զոր գործէիր ի վերայ բլրոց և դաշտաց տեսի. վա՜յ քեզ, Երուսաղէմ, միթէ ո՞չ սրբեսցիս. մինչև ցե՞րբ։ [8] Եբր. Վասն խորխորելոյ հողոյն [9] Եբր. կացին ի տեղիս բարձունս, [10] Եբր. Փրկիչ նորա [11] Եբր. զճանապարհորդ [12] Եբր. ապշեալ [13] Եբր. Տէր

12 Նորիկ ի բարիս։ Զի թէ պահեսցեն, ոչ
լուայց խնդրուածոյ նոցա. եւ եթէ մա-
տուսցեն ողջակէզս եւ զոհս՝ ոչ հաճեցայց
ընդ այն. զի սրով եւ սովով եւ մա-
13 հուամբ սպառեցից զնոսա։ Եւ ասեմ,
Ո՛վ, որ եսդ Տէր Տէր, ահա մարգա-
րէքն ասեն նոցա՝ թէ Ոչ տեսջիք զսուր,
եւ սով ոչ եղիցի ի միջի ձերում, զի
[1]ճշմարտութիւն եւ խաղաղութիւն տա-
ցի ի վերայ երկրի, եւ՛՛ ի տեղւոջ յայդ-
14 միկ։ Եւ ասէ ցիս Տէր, Սուտ մարգա-
րէանան մարգարէքն յանուն իմ. ոչ ա-
ռաքեցի զնոսա, եւ ոչ պատուիրեցի
նոցա, եւ ոչ խօսեցայ ընդ նոսա. զի
տեսիլս սուտս, եւ ըղձութիւնս եւ
հմայս, եւ [2]զկամս սրտից իւրեանց մար-
15 գարէանան նոքա ձեզ։ Վասն այսորիկ
այսպէս ասէ Տէր ի վերայ մարգարէիցն,
որ մարգարէանան յանուն իմ, եւ ես
ոչ առաքեցի զնոսա [3]եւ ոչ պատուի-
րեցի նոցա՛՛, որ ասեն՝ թէ Սուր եւ սով ոչ
եղիցի յերկրիս յայսմիկ. [3]յախտ ծիւրական
մահու, եւ՛՛ ի սուր եւ ի սով սպառեսցին
16 մարգարէքն այնոքիկ. Եւ ժողովուրդն
որոց նոքայն մարգարէանան, եղիցին
ընկեցեալք յանցս Երուսաղեմի՝ յերեսաց
սրոյ եւ սովոյ, եւ ոչ ոք իցէ որ թաղիցէ
զնոսա, ինքեանք եւ կանայք իւրեանց
եւ ուստերք եւ դստերք նոցա. եւ
հեղից ի վերայ նոցա զչարիս իւրեանց։
17 Եւ ասասցես ցնոսա զայս բան. [4]Ի-
ջուցէք ընդ աչս ձեր՛՛ արտասուս ի տուէ
եւ ի գիշերի, եւ մի՛ պակասեսցին. զի
բեկմամբ մեծաւ բեկաւ կոյս դուստր
ժողովրդեան իմոյ, եւ ցաւագին հարուա-
18 ծովք յոյժ։ Եթէ ելից ի դաշտ՝ ահա
վիրաւորք սրոյ, եւ եթէ մտից ի քա-
ղաք՝ ահա ցաւք սովոյ. զի մարգարէ եւ
քահանայ գնացին յերկիր զոր ոչ գիտէին։
19 Միթէ խոտելով խոտեցե՞ր զՅուդա,
[5]կամ վերանալով վերացա՞ւ՛՛ անձն քո,
ընդէ՞ր հարեր զմեզ, եւ ոչ գոյ մեր
բժշկութիւն. ակն կալաք խաղաղու-
թեան, եւ ոչ գոյր բարութիւն, ժա-
մանակի բժշկութեան, եւ ահա խռո-
20 վութիւն։ Ծանեաք, Տէր, զմեղս մեր
եւ զանիրաւութիւնս հարց մերոց. զի
21 մեղաք առաջի քո։ [6]Դադարեա վասն
անուանդ քո, մի՛ կորուսաներ զաթոռ
փառաց քոց. յիշեա, մի՛ ցրեր զուխտն
22 քո որ ընդ մեզ։ Միթէ իցէ՞ ի կուռս
հեթանոսաց՝ որ տեղասցէ, կամ թէ եր-
կի՞նք տայցեն [7]զլրութիւն իւրեանց. ո՞չ
ապաքէն դու ես նոյն Տէր Աստուած
մեր, եւ ակնկալցուք քեզ, զի դու ա-
րարեր զայս ամենայն։

## ԳԼ. ԺԵ

1 Եւ ասէ ցիս Տէր, Եթէ կայցեն Մով-
սէս եւ Սամուէլ առաջի երեսաց իմոց,
ոչ եղիցի անձն իմ ընդ [8]նոսա. ի բաց
արձակեա զժողովուրդդ դայդ յերեսաց
2 իմոց, եւ ելցեն։ Եւ եղիցի եթէ ասի-
ցեն ցքեզ, Յո՞վ ելցուք, ասասցես ցնո-
սա, Այսպէս ասէ Տէր. Որք ի մահ՝ ի
մահ, եւ որք ի սուր՝ ի սուր, եւ որք
ի սով՝ ի սով, եւ որք ի գերութիւն՝ ի
3 գերութիւն։ Եւ խնդրեցից ի նոցանէ
վրէժս չորիւք օրինակօք՝ ասէ Տէր. զսուր
ի սպանանել, եւ զշունս ի պատառել,
եւ զթռչունս երկնից եւ զգազանս երկ-
4 րի՝ յուտել եւ յապականել։ Եւ մատ-
նեցից զնոսա ի վտանգ ամենայն թա-
գաւորութեանց երկրի, վասն Մանասէի
որդւոյ Եզեկեայ թագաւորին Յուդայ,
եւ վասն ամենայնի զոր արար յԵրու-
5 սաղէմ։ Ո՞ խնայեսցէ ի քեզ, Երուսա-
ղէմ, կամ ո՞ տրտմեսցի ի վերայ քո,
կամ ո՞ դարձցի հարցանել զխաղաղու-
6 թենէ քումմէ։ Զի դու դարձար յինէն,
ասէ Տէր, եւ յետս [9]երթիցես. եւ ձգե-
ցից զձեռն իմ ի վերայ քո, եւ ապա-
կանեցից զքեզ. [10]եւ ոչ եւս անսայից
7 նոցա՛՛։ Եւ ցրուեցից զնոսա [11]ի սփիւռս,
ի դրունս ժողովրդեան իմոյ անզաւա-
կեցան. զի կորուսի զժողովուրդ իմ
վասն չարեաց իւրեանց, եւ՛՛ ոչ
8 դարձան։ Բազմացան այրիք
նոցա քան զաւազ ծովու. ածի ի վե-
րայ նոցա եւ ի վերայ մօրն [12]զերիտա-
սարդս, թշնամութիւն ի միջօրէի ար-
կի զնովաւ. եկն՛՛ յանկարծակի դողումն
9 եւ տագնապ։ [13]Ունայնացաւ ներկնա-
ծինն, ձանձրացաւ անձն նորա՛՛. եմուտ

---

[1]Եբր. խաղաղութիւն ճշմարտութեան տաց ձեզ
[2]Եբր. զպատրանս [3]Յեբր. դ—յ—ւ—է [4]Եբր. Իջուսցեն աչք իմ [5]Եբր. ի Սիոնէ զարշեցա՞ւ [6]Եբր. Մի՛ խոտեր զմեզ

[7]Եբր. զյորդութիւն [8]Եբր. ժողովրդեանդ ընդ այդմիկ [9]Եբր. կացեր [10]Եբր. վաստակեալ եմ յողորմելոյ [11]Եբր. հեծանեցաւ ի դրունս երկրի. անզաւակեցից, կորուսից զժողովուրդ իմ. ի ճանապարհաց իւրեանց [12]Եբր. երիտասարդի զապականիչն ի միջօրէի. արկի զնովաւ [13]Եբր. Նուաղեցաւ ներկնածինն, աւանդեաց զհոգի իւր

նմա արեւ զմիջօրէիւ, եղեւ յամօթ
եւ ի նախատինս. զմնացորդս նոցա տաց
ի սուր առաջի թշնամեաց նոցա, ասէ
Տէր։
10 Վա՜յ ինձ, մայր իմ, [1]իբրեւ զո՞
ոք ծնար զիս. այր՝՝ դատափետեալ
եւ ձգձգեալ ի դատաստան յամենայն
երկրի. ոչ [2]պարտիմ ինչ, եւ ոչ պար-
տի որ ինչ ինձ. եւ զօրութիւն իմ պա-
11 կասեաց յանիծանելեաց իմոց։ Եղիցի,
Տէր, եւ յաջողեսցի նոցա ի բարու-
թիւնս. եթէ ոչ կացի առաջի քո, ի
ժամանակի չարեաց նոցա, եւ ի ժամա-
նակի նեղութեան նոցա ի բարիս ընդդէմ
12 թշնամւոյ։ Իցէ՞ թէ ճանաչիցի երկաթ.
եւ քաղաքորմ պղնձի զօրութիւն քո.
13 Եւ զգանձս քո տաց օտարաց ի փրկանս՝՝
վասն ամենայն մեղաց քոց յամենայն
14 սահմանս քո։ Եւ ծառայեցուցից զքեզ
թշնամեաց քոց յերկրի զոր ոչ գիտէ-
ցես. զի հուր վառեալ է ի սրտմտու-
թենէ իմմէ, ի վերայ ձեր բորբոքեսցի։
15 Դու գիտես, Տէր. յիշեա զիս, [3]Տէր.
այց արա ինձ. [4]անպարտ արա զիս՝՝ ի
հալածչաց իմոց, [5]եւ մի՛ յերկարեր վասն
իմ՝՝. ծանիր՝ որչափ առի վասն քո [6]նա-
խատինս յարհամարհողաց բանից քոց։
16 Վախճանեա զնոսա, եւ եղիցի՝՝ բան քո
ինձ յուրախութիւն եւ ի ցնծութիւն
սրտի իմոյ. զի կոչեցեալ է անուն քո
ի վերայ իմ, Տէր Աստուած Ամենակալ։
17 Ոչ նստայ յատենի այպանողաց, [7]այլ
սարսեցի՝՝ յերեսաց ձեռին քո՝ առանձին
18 նստէի, զի [8]լցայ դառնութեամբ։ Ընդ-
է՞ր որ տրտմեցուցանեն զիս՝ զօրա-
նան, եւ վէրք իմ սաստիկք, ուստի՞
բժշկեցայց. լինելով եղեւ ինձ իբրեւ
զջուր ցուրտ՝՝ յորում ոչ գոյ հաւատ։
19 Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր. Ե-
թէ դարձցիս այսրէն՝ պատսպարեցից
զքեզ, եւ առաջի երեսաց իմոց կաց-
ցես. եւ եթէ հանցես զպատուականն
յանարգէ, իբրեւ զբերան իմ եղիցես.
[3]եւ եթէ՝՝ դարձցին նոքա առ քեզ, եւ
20 ոչ եւս դու դարձցիս առ նոսա։ Տաց
զքեզ ժողովրդեանդ այդմիկ ի պարիսպ
պղնձի ամուր. մարտիցեն ընդ քեզ, եւ
ոչ կարիցեն սասանել. զի ընդ քեզ եմ
21 ապրեցուցանել եւ փրկել, ասէ Տէր։ Եւ
զերծուցից զքեզ ի ձեռաց չարաց, եւ
փրկեցից զքեզ ի ձեռաց ժանտաց, [3]ասէ
Տէր Աստուած Իսրայելի՝՝։

## ԳԼ. ԺԶ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս ասելով.
2 Եւ դու մի՛ առնուցուս քեզ կին, եւ
մի՛ ծնցին քեզ ուստերք եւ դստերք ի
3 տեղւոջդ յայդմիկ։ Զի այսպէս ասէ Տէր
վասն ուստերաց եւ դստերաց որ ծնա-
նիցին ի տեղւոջդ յայդմիկ, եւ վասն
մարց նոցա որ ծնանիցին զնոսա, եւ վասն
հարց նոցա որ ծնանիցին զնոսա յերկրիդ
4 յայդմիկ. Ծիւրեալ ախտիւ մեռցին, մի՛
կոծեսցին եւ մի՛ թաղեսցին, [9]այլ խայ-
տառակ՝՝ եղիցին ընդ երեսս երկրի. սրով
անկցին եւ սովով սպառեսցին. եւ ե-
ղիցին դիակունք նոցա ի կերակուր
թռչնոց երկնից եւ գազանաց երկրի։
5 Այսպէս ասէ Տէր. Ցաչխարումն նոցա
մի՛ մտանիցես, եւ ի կոծ նոցա մի՛ եր-
թիցես, եւ սուգ ի վերայ նոցա մի՛ առ-
նուցուս. զի ի բաց արարի զխաղաղու-
թիւն իմ ի ժողովրդենէն յայնմանէ, ա-
սէ Տէր, եւ զողորմութիւնս եւ զգթու-
6 թիւնս։ Եւ մեռանիցին մեծամեծք եւ
փոքունք յերկրին յայնմիկ. մի՛ կոծես-
ցին եւ մի՛ ցանեսցին եւ մի՛ խզեսցին
7 եւ մի՛ լացցին եւ մի՛ թաղեսցին։ Եւ
մի՛ բեկցի հաց սգոյ նոցա ի մխիթարու-
թիւն ի վերայ մեռելոյ, եւ մի՛ արբուս-
ցեն բաժակ մխիթարութեան ի վերայ
8 հօր եւ մօր իւրոյ։ Ի տուն ըմպելեաց
մի՛ մտանիցես նստել ընդ նոսա՝ ուտել
9 եւ ըմպել։ Զի այսպէս ասէ Տէր զօ-
րութեանց Աստուած Իսրայելի. Ահա-
ւասիկ ես խափանեցից ի տեղւոջէդ յայդ-
մանէ առաջի աչաց ձերոց, եւ ի ձեր իսկ
աւուրս, զձայն ցնծութեան եւ զձայն

---

[1] Եբր. ծնար զիս իբրեւ զայր [2] Եբր. ետու արծաթ ի փոխ, եւ ոչ այլք ետուն ինձ արծաթ ի փոխ, եւ ամենեքին անիծանեն զիս։ (11) Ասէ Տէր, Արդարեւ ապրեցուցից զքեզ ի բարութիւնս, արդարեւ արարից զի թշնամին աղերս արկցէ քեզ ի ժամանակի չարեաց եւ ի ժամանակի նեղութեան։ (12) Միթէ կարիցէ՞ խորտակել երկաթ զերկաթ ի հիւսիսոյ եւ զպղինձ. (13) Զստացուածս քո եւ զգանձս քո տաց ի յափշտակութիւն, ոչ ի գինս [3] Եբր. ողորմեա [4] Եբր. և հան զվրէժ իմ [5] Եբր. մի՛ յերկայնմտութեան ցասման քո բարձցես զիս [6] Եբր. նախատինս։ (16) Գտան բանք քո, և կերայ զնոսա և եղեւ [7] Եբր. և ոչ ուրախ եղէ. [8] Եբր. դառնութեամբ լցեր զիս։ (18) Ընդէ՞ր եղեւ ցաւ իմ մշտնջենաւոր. եւ վէրք իմ անյոյս, առանց բժշկութեան. լինելո՞վ լինիցիս ինձ իբրեւ սուտ, ջուր

[9] Եբր. յաղբ

ուրախութեան, զձայն փեսայի եւ զձայն
10 հարսին։ Եւ եղիցի յորժամ պատմես-
ցես ժողովրդեանդ այնմիկ զամենայն
պատգամս զայսոսիկ, եւ ասասցեն
ցքեզ, Ընդէ՞ր խօսեցաւ Տէր ի վերայ
մեր զայս ամենայն չարիս մեծամեծս.
զի՞նչ անիրաւութիւն է ի մեզ, կամ
ո՞ր մեղք զոր մեղաք առաջի Տեառն
11 Աստուծոյ մերոյ. Եւ ասասցես ցնոսա,
Փոխանակ զի թողին զիս հարքն ձեր,
ասէ Տէր, եւ գնացին զհետ աստուածոց
օտարաց, եւ ծառայեցին նոցա եւ եր-
կիր պագին նոցա, եւ զիս թողին եւ
12 զօրէնս իմ ոչ պահեցին։ Եւ դուք ան-
զգամեցայք առաւել քան զհարսն
ձեր. եւ ահաւասիկ դուք երթայք իւ-
րաքանչիւր զհետ հաճոյից սրտից ձե-
13 րոց չարաց առ ի չլսել ինձ։ Եւ ընկե-
ցից զձեզ յերկրէդ յայդմանէ յերկիր՝ զոր
ոչ գիտացէք դուք եւ հարքն ձեր, եւ
ծառայեսջիք անդ աստուածոց օտարաց
ի տուէ եւ ի գիշերի, [1]եւ ոչ արասցեն"
ձեզ ողորմութիւն։
14 Վասն այսորիկ ահա աւուրք գան,
ասէ Տէր, եւ ոչ եւս ասասցեն՝ Կեն-
դանի է Տէր որ եհան զորդիսն Իսրա-
15 յէլի յերկրէն Եգիպտացւոց. Այլ թէ՝
Կենդանի է Տէր որ եհան զորդիսն Իս-
րայէլի յերկրէն հիւսիսոյ, եւ յամենայն
աշխարհաց ուր եւ մերժեցան անդր. եւ
[2]զատադարեսցէ զնոսա անդրէն յերկիրն
իւրեանց զոր [3]ետ հարցն նոցա։
16 Ահաւասիկ ես առաքեմ ձկնորսս բա-
զումս, ասէ Տէր, եւ որսասցեն զնո-
սա. եւ յետ այնորիկ առաքեցից որ-
սորդս բազումս, եւ որսասցեն զնոսա
ի վերայ ամենայն լերանց եւ ի վերայ
ամենայն բլրոց եւ ի ծակուց վիմաց։
17 Զի աչք իմ ի վերայ ամենայն ճանա-
պարհաց նոցա, եւ ոչ թաքեան յերե-
սաց իմոց, եւ ոչ ծածկեցան անիրա-
ւութիւնք նոցա առաջի աչաց իմոց։
18 Եւ հատուցից նոցա նախ կրկին զանի-
րաւութիւնս նոցա, եւ զմեղս նոցա ո-
րովք պղծեցին զերկիր իմ մեռելոտուովք
զարշելեացն իւրեանց, եւ անօրէնու-
թեամբք նոցա, որովք լցին զժառան-
գութիւն իմ։
19 Տէր, զօրութիւն իմ եւ օգնութիւն
իմ եւ ապաւէն իմ յաւուր չարեաց. առ

[1] Եբր. զի ոչ արարից [2] Եբր. պատսպարեցից
[3] Եբր. ետու

քեզ հեթանոսք եկեսցեն ի ծագաց եր-
կրէ եւ ասասցեն, [4]Որպէս սուտ գործէին
հարքն մեր կուռս," եւ ոչ գոյր օգուտ
ի նոցանէ։
20 Եթէ առնիցէ՞ մարդ անձամբ անձին
աստուածս՝ եւ նոքա չեն աստուածք։
21 Վասն այնորիկ ահաւասիկ ես ցուցից
նոցա ի ժամանակի յայսմիկ զձեռն իմ,
ծանուցից նոցա եւ զզօրութիւն իմ. եւ
գիտասցեն՝ թէ անուն իմ Տէր է։

## Գլ. ԺԷ

1 Մեղք Յուդայ գրեալ են գրչաւ երկա-
թեաւ, ադամանդեայ եղնգամբ. քա-
ծեալ է ի տախտակս սրտից նոցա, եւ
2 յեղջեւրս սեղանոց [5]ձերոց. [6]Ի ժամա-
նակի յորում" յիշեսցեն որդիք նոցա
զսեղանս իւրեանց, եւ զանտառս իւ-
րեանց ի վերայ ծառոց վարսաւորաց եւ
3 ի վերայ բլրոց բարձանց, [7]Եւ ի վերայ
լերանց" վայրի, զզօրութիւն քո եւ
զամենայն գանձս քո բաշխեցից յաւա-
րի, զբարձունս քո մեղօք յամենայն
4 սահմանս քո։ Եւ լքջիր եւ նկուն լի-
ջիր ի ժառանգութենէ քումմէ զոր ե-
տու քեզ. եւ [8]հանից զքեզ ի ձեռս"
թշնամեաց քոց յերկիր զոր ոչ գիտե-
ցես. զի հուր [9]վառեալ է" ի սրտմտու-
թեան իմում, մինչեւ յաւիտեան բոր-
բոքեսցի։
5 Այսպէս ասէ Տէր. Անիծեալ լիցի մարդ
որ արասցէ զյոյս իւր ի մարդ, եւ ա-
պաստան լինիցի ի մարմին բազկի նո-
րա, եւ ապստամբիցէ ի Տեառնէ սիրտ
6 նորա։ Եւ եղիցի իբրեւ զմոշա վայրի
յանապատի, եւ մի՛ տեսցէ յորժամ գայ-
ցէ բարութիւն. եւ բնակեսցէ յաղտաղ-
տուկս անապատի, յերկիր աղտաղտուկ՝
7 ուր ոչ երբեք բնակիցեն. Օրհնեալ լիցի
մարդն որ յուսացաւ ի Տէր, եւ եղիցի
8 Տէր յոյս նորա։ Եւ եղիցի իբրեւ զծառ
դալարացեալ ի գնացս ջուրց. եւ ընդ
գնացս ջուրց ձգտեցուսցէ զարմատս
իւր, եւ մի՛ երկիցէ յորժամ հասանիցէ
տօթ. եւ եղիցի [10]ստեղն նորա անտա-
ռացեալ չուրջ զնովաւ". յամէ երաշ-
տութեան մի՛ երկիցէ, եւ մի՛ կասեսցէ
ի տալոյ զպտուղ։

[4] Եբր. Արդարեւ սուտ ժառանգեցին հարքն մեր. ունայնութիւն, [5] Կամ, նոցա [6] Եբր. Որպէս զի [7] Եբր. Լեառն իմ [8] Եբր. ծառայեցուցից զքեզ [9] Եբր. վառեցեր [10] Եբր. տերեւ նորա դալար

9 [1]Խորին է սիրտ քան զամենայն եւ
10 [2]մարդ է", եւ ո՞վ ծանիցէ զնա։ Ես Տէր
քննեմ զսիրտս եւ փորձեմ զերիկա-
մունս, տալ իւրաքանչիւր ըստ ճանա-
պարհաց իւրոց եւ ըստ պտղոց գործոց
11 իւրոց։ [3]Ձայն արար կաքաւ, ժողովեաց
զոր ոչ իւր ծնեալ," որ ժողովէ զմե-
ծութիւն առանց իրաւանց, ի կէս ա-
ւուրց իւրոց թողցէ զնա, եւ ի վախ-
12 ճանի իւրում եղիցի անզգամ։ Աթոռ
փառաց բարձրացեալ ի սկզբանէ տեղի
13 սրբութեան մերոյ։ Ակնկալութիւն Իս-
րայէլի, Տէր, ամենեքեան որ թողին
զքեզ՝ ամաչեսցեն. հեռացեալքն՝ յերկ-
րի գրեսցին, զի թողին զՏէր զաղբեւր
ջրոյ կենաց։
14 Բժշկեա զիս, Տէր, եւ բժշկեցայց,
փրկեա զիս, [5]Տէր, եւ փրկեցայց. զի
15 պարծանք իմ դու ես։ Ահաւասիկ նոքա
ասեն ցիս. Ո՞ւր է բան Տեառն, եկես-
16 ցէ այսր։ Բայց ես ոչ [6]ձանձրացայց գալ"
զկնի քո. եւ աւուր [7]մարդոյ ոչ ցան-
կացայ, դու իսկ գիտես. որ ինչ ելանէ
ընդ շրթունս իմ, առաջի երեսաց քոց
17 է։ Մի՛ լինիր ինձ [8]յօտարութիւն. խնայ-
18 եա դու յիս" յաւուր չարի։ Յամօթ լի-
ցին հալածիչքն իմ, եւ մի՛ ես ամաչե-
ցից. զարհուրեսցին նոքա, եւ մի՛ ես
զարհուրեցայց. ած ի վերայ նոցա օր
չար, կրկին բեկմամբ բեկ զնոսա։
19 Այսպէս ասէ ցիս Տէր. Երթ կաց ի
դրունս [9]ժողովրդեան քո" ընդ որ մտա-
նեն եւ ելանեն թագաւորքն Յուդայ,
20 եւ յամենայն դրունս Երուսաղեմի. Եւ
ասասցես ցնոսա, Լուարուք զպատգամս
Տեառն, թագաւորք Յուդայ եւ ամե-
նայն Հրէաստան, եւ ամենայն բնա-
կիչքդ Երուսաղեմի որ մտանէք ընդ
21 դրունսդ ընդ այդոսիկ։ Այսպէս ասէ
Տէր. Զգոյշ լերուք անձանց ձերոց, եւ
մի՛ բառնայք բեռինս յաւուր շաբա-
թուց, եւ մի՛ [10]ելանէք ընդ դրունս Ե-
22 րուսաղեմի. Եւ մի՛ հանէք բեռինս ի
տանց ձերոց յաւուր շաբաթուց. եւ զա-
մենայն գործ մի՛ գործէք, եւ սրբեցէք
զօրն շաբաթուց՝ որպէս պատուիրեցի
23 հարցն ձերոց։ Եւ ոչ լուան, եւ ոչ խո-
նարհեցուցին զունկն իւրեանց. եւ
խստացուցին զպարանոցս իւրեանց [5]ա-
ւելի քան զհարցն իւրեանց," առ ի
24 չլսելոյ ինձ եւ ընդունելոյ զխրատ։ Եւ
եղիցի եթէ լսելով լուիցէք ինձ, ասէ
Տէր, չբերել բեռն ընդ դրունս քաղա-
քիս այսորիկ յաւուր շաբաթուց, եւ
սրբել զօրն շաբաթու, չգործել ի նմա
25 զամենայն գործ. Եւ մտցեն ընդ դրունս
քաղաքիդ այդորիկ թագաւորք եւ իշ-
խանք, որ նստիցին յաթոռն Դաւթի.
եւ ելանիցեն ի կառս եւ յերիվարս ի-
րեանց, եւ իշխանք նոցա՝ արք Յու-
դայ եւ բնակիչք Երուսաղեմի. եւ բնա-
26 կեսցի քաղաքդ այդ յաւիտեան։ Եւ ե-
կեսցեն ի քաղաքացն Յուդայ շուրջա-
նակի՝ յԵրուսաղէմ, եւ ի Բենիամինէ
եւ ի դաշտականաց եւ ի լեռնակողմանց
եւ ի կողմանց հարաւոյ՝ բերել ողջա-
կէզ եւ [11]խունկս՝ եւ մանանա" եւ կընդ-
րուկ, մատուցանելով օրհնութիւն ի
27 տան Տեառն։ Արդ թէ ոչ լուիցէք ինձ
սրբել զօրն շաբաթուց, չբառնալ բե-
ռինս եւ մտանել ընդ դրունս Երուսա-
ղեմի յաւուր շաբաթուց, վառեցից հուր
ի դրունս նորա, եւ կերիցէ [12]շուրջ զԵ-
րուսաղեմաւ", եւ մի՛ շիջցի։

## ԳԼ. ԺԸ

1 Բանն որ եղեւ առ Երեմիա ի Տեառ-
2 նէ, եւ ասէ, Արի էջ ի տուն բրտին,
3 եւ անդ լուիցես զբանս իմ։ Իջի ի տուն
բրտին, եւ ահա նա գործէր ի վերայ
4 [13]վիմաց։ Եւ անկաւ" աման մի զոր ինքն
գործէր ի կաւոյն՝ [14]ի ձեռաց նորա. եւ
դարձեալ արար զնա այլ աման, որպէս
5 հաճոյ եղեւ առաջի նորա առնել։ Եւ
6 եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ, Ե-
թէ իբրեւ զբրուտդ զայդ ո՞չ կարիցեմ
առնել զձեզ, տունդ Իսրայէլի, ասէ
Տէր. ահաւասիկ իբրեւ զկաւդ ի ձեռս
բրտիդ, այնպէս էք ի ձեռս իմ, տունդ
7 Իսրայէլի։ Եթէ [15]վախճան խօսեցայց ի
վերայ ազգի կամ թագաւորութեան,
բառնալ զնոսա եւ քակել եւ կորու-
8 սանել, Եւ դարձցի ազգն այն ի չա-
րեաց իւրեանց զոր խօսեցայ ի վերայ

---

[1]Եբր. Խարդ [2]Եբր. Նենգաւոր [3]Եբր. Որպէս կաքաւ որ ժողովէ զոր չէ իւր ծնեալ, այնպէս [4]Եբր. [illegible], յինէն [5]Յեբր. պակասէ [6]Եբր. խուսեցի ի լինելոյ հովիւ [7]Եբր. անձկութեան [8]Եբր. յարհաւիրս, դու ես ապաւէն իմ [9]Եբր. որդւոց ժողովրդեան [10]Եբր. մուծանէք

[11]Եբր. զոհ եւ ընծայ հացի [12]Եբր. զապարանս Երուսաղեմի [13]Եբր. վիմաց երկուց (դրգան). (4) Եւ եղծաւ [14]Եբր. ի ձեռս [15]Եբր. երբեք

նոցա, զղջացայց և ես ի վերայ չա-
9 րեացն զոր խորհեցայ առնել նոցա։ Եւ
եթէ [1]վախճան խօսեցայց ազգի և թա-
10 գաւորութեան՝ շինել և տնկել, Եւ ա-
րասցեն չարիս առաջի իմ, չլսել բար-
բառոյ իմոյ, զղջացայց և ես ի վերայ
բարեացն զոր խօսեցայ առնել նոցա։
11 Եւ արդ խօսեաց ընդ արս Յուդայ
և ընդ բնակիչս Երուսաղեմի, և ա-
սասցես, Այսպէս ասէ Տէր. Ահաւասիկ
ես նիւթեմ ի վերայ ձեր չարիս, և
խորհիմ ի վերայ ձեր խորհուրդ. արդ
դարձցի իւրաքանչիւր ոք 'ի ճանապար-
հէ իւրմէ չարէ, և ուղիղ արարէք
12 զգնացս ձեր և զճանապարհս ձեր։ Եւ
ասեն, [2]Բաջասցուք, զհետ ապստամ-
բութեանց մերոց գնասցուք, և իւրա-
քանչիւր ոք զհաճոյս սրտի իւրոյ չարի
արասցուք։
13 Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր.
Արդ աղէ հարցէք ընդ ազգս, ո՞վ ոք
լուաւ այնպիսի արհաւիրս զոր արար
14 յոյժ կոյսդ Իսրայէլի։ Միթէ [3]պակա-
սեսցե՞ն ստինք ի վիմէ, կամ ձիւն ի Լի-
բանանէ, կամ թէ պակասեսցե՞ն ջուրք
բռնութեամբ ի սաստկութենէ հողմոյ"։
15 Զի մոռացաւ զիս ժողովուրդ իմ, [4]ըն-
դունայնս արկին խունկս. և տկա-
րասցին ի ճանապարհս իւրեանց ի վի-
ճակս յաւիտենից, երթալ ի շաւիղս, ուր
16 ոչ իցէ ճանապարհ գնալոյ", կարգել զեր-
կիր նոցա յապականութիւն և ի շչիւն
յաւիտենից. ամենեքին որ անցանեն ընդ
այն՝ զարմասցին, և շարժեսցեն զգլուխս
17 իւրեանց։ Իբրև հողմ տապախառն
ցրուեցից զնոսա առաջի թշնամեաց իւ-
րեանց, [5]ի պարանոցս և ոչ յերեսս.
ցուցից նոցա զօր" կորստեան իւրեանց։
18 Եւ ասացին, Եկայք խորհեսցուք խոր-
հուրդ ի վերայ Երեմիայի. զի ոչ կորն-
չին օրէնք ի քահանայէ, և խորհուրդ
յիմաստնոյ, և բան ի մարգարէէ. եկայք
և հարցուք զնա լեզուաւ, և ոչ լուի-
ցուք զամենայն բանս նորա։
19 Լուր ինձ, Տէր, և անսա բարբա-
20 ռոյ [6]իրաւանց իմոյ"։ Իցէ՞ թէ հատու-
ցանիցի չար փոխանակ բարւոյ. զի [7]խոր-
հեցան ի միասին բանս զանձնէ իմմէ,
և զտանջանս իւրեանց թաքուցին".
յուշ լիցի քեզ ի կալն իմում առաջի
քո, խօսել վասն նոցա բարութիւն,
դարձուցանել զբարկութիւն քո ի նո-
21 ցանէ։ Վասն այնորիկ տուր զորդիս նո-
ցա ի սով, և [8]ժողովեա զնոսա ի ձեռս
սրոյ, եղիցին կանայք նոցա անորդիք
և այրիք, և արք նոցա եղիցին կո-
տորեալք մահուամբ, և երիտասարդք
նոցա անկեալք սրով ի պատերազմի։
22 Եղիցի գոյժ ի տունս նոցա. զի ածցես
ի վերայ նոցա յանկարծակի աւազակս.
զի [9]բանս ի գործ արարին" ունել զիս,
23 և որոգայթս թաքուցին [10]ինձ։ Եւ դու,
Տէր, գիտացեր զամենայն խորհուրդս
նոցա զինէն ի մահ. մի՛ քաւեսցես զա-
նիրաւութիւնս նոցա, և զմեղս նոցա
յերեսաց քոց մի՛ ջնջեսցես. [11]եղիցի հի-
ւանդութիւն նոցա" առաջի քո. ի ժա-
մանակի սրտմտութեան քո արա ի նոսա։

## Գլ. ԺԹ

1 [12]Յայնժամ ասէ ցիս" Տէր, Երթ ստացիր
քեզ կուժ մի ստեղծեալ ի կաւոյ, և
ածցես ի ծերոց ժողովրդեանն և ի ծե-
2 րոց քահանայիցն. Եւ ելցես [13]ի գերեզ-
մանս որդւոցն նոցա, որ է առաջի մտից
դրանն Քարսիթեայ, և ընթերցցիս" անդ
զամենայն զբանս զոր խօսեցայց ընդ
3 քեզ. Եւ ասասցես ցնոսա, Լուարուք
զպատգամ Տեառն, թագաւորք Յուդայ
և [14]արք Հրէաստանի և" բնակիչք Ե-
րուսաղեմի. այսպէս ասէ Տէր զօրու-
թեանց Աստուած Իսրայէլի. Ահաւա-
սիկ ես ածից ի վերայ տեղւոյդ այդո-
րիկ չարիս. որպէս զի ամենայնի որ
4 լուիցէ՝ հնչեսցեն ականջք իւր. Փոխա-
նակ զի թողին զիս, և օտարացուցին
զտեղիս զայս յինէն. և արկանէին ի
սմա խունկս աստուածոց օտարաց, զորս
ոչ գիտէին ինքեանք և հարք իւրեանց,
և թագաւորքն Յուդայ. և լցին զտե-

[1]Եբր. երբեք [2]Եբր. Զի յոյս [3]Եբր. պա-
կասեսցէ՞ ի վիմէ վայրի ձիւն Լիբանանու, կամ
թէ ցամաքեսցի՞ն ջուրք օտարք ցուրտք որ
հոսեն [4]Եբր. սնոտեաց արկին խունկս և
եհաւն նոցա սահել ի ճանապարհս իւրեանց, ի
շաւիղս հինս, գնալ ընդ ճանապարհս անկոխս
[5]Եբր. զքամակ և ոչ զերեսս ցուցից նոցա յաւուր

[6]Կամ. որոց դատախազն կան ինձ [7]Եբր. փորե-
ցին փոս անձին իմում [8]Եբր. մատնեա [9]Եբր.
փորեցին փոս [10]Եբր. ոտից իմոց [11]Եբր.
կործանեսցին [12]Եբր. Այսպէս ասէ [13]Եբր.
ի ձորն որդւոյն Ենովմայ, որ ի մուտս դրան
Քարսիթայ (խեցեաց), և քարոզեսցես [14]Յեբր.
պակասէ

5 զԽս զայս արևամբ անմեղաց . Եւ շինե-
ցին բագինս Բահաղու , այրել զորդիս
իւրեանց հրով , ողջակէզս Բահաղու .
զոր ոչ պատուիրեցի եւ ոչ խօսեցայ ,
6 եւ ոչ անկի զմտաւ ի սրտի իմում ։ Վասն
այդորիկ ահա աւուրք գան , ասէ Տէր ,
եւ ոչ եւս կոչեսցի տեղւոյդ այ-
դորիկ [1]Գլորումն եւ գերեզմանն" որդւոյն
7 Ենովմայ , այլ Ձոր կոտորածի ։ Եւ խա-
փանեցից զխորհուրդն Յուդայ եւ զխոր-
հուրդն Երուսաղեմի ի տեղւոջն յայն-
միկ . եւ արկից զնոսա սուսերաւ առաջի
թշնամեաց իւրեանց , եւ ի ձեռս
խնդրողաց անձանց նոցա. եւ տաց զդիա-
կունս նոցա ի կերակուր թռչնոց երկ-
8 նից եւ գազանաց երկրի ։ Եւ կարգե-
ցից զքաղաքն զայն յապականութիւն
եւ ի շչիւն . ամենայն որ անցանէ ընդ
նա՝ [2]արամեսցի , եւ շչեսցէ ի վերայ ա-
9 մենայն հարուածոց նորա ։ Եւ [3]կերի-
ցեն զմարմինս ուստերաց եւ զմարմինս
դստերաց իւրեանց , եւ իւրաքանչիւր
զմարմին ընկերի [4]իւրոյ՝ ի նեղութեան
եւ ի պաշարման զոր պաշարեսցեն զնո-
սա թշնամիք իւրեանց եւ որք խնդրէին
զանձինս նոցա ։
10 Եւ խորտակեսցես զկուժն առաջի ա-
11 րանցն որ եկանիցեն ընդ քեզ . Եւ ա-
սասցես ցնոսա , Այսպէս ասէ [5]զխս Տէր
զօրութեանց . Այսպէս խորտակեցից
զժողովուրդ զայդ եւ զքաղաքդ , որ-
պէս խորտակի աման խեցեղէն , որ ոչ
կարիցէ միւսանգամ բժշկել . եւ ի Տա-
փեթ թաղեսցին առ ի չգոյէ տեղւոյ թա-
12 ղելոյ ։ Այսպէս արարից տեղւոյդ այդ-
միկ , ասէ Տէր , եւ բնակչացդ որ ի դմա .
13 տալ զքաղաքդ զայդ [6]ի գլորումն . Եւ
եղիցին տունք Երուսաղեմի եւ տունք
թագաւորացն Յուդայ իբրեւ զտեղի
[7]ապականելոց , վասն պղծութեանց զոր ա-
րարին յամենայն տունս" յորս արկա-
նէին խունկս ի վերայ տանեաց իւրեանց՝
ամենայն զօրութեանց երկնից , եւ նուի-
14 րէին նուէրս աստուածոց օտարաց ։ Եւ
եկն Երեմիա ի [6]գլորմանէն Տափեթայ ,
ուր առաքեաց զնա Տէր անդ մարգարէա-
նալ . եւ եկաց [8]ի սրահի տանն Տեառն , եւ
15 ասէ ցամենայն ժողովուրդն , Այսպէս ասէ

[1] Եբր. Տափեթ եւ ձոր [2] Եբր. ապշեսցի [3] Եբր. տաց նոցա ուտել [4] Եբր. իւրոյ կերիցէ [5] Յ. Եբր. [illegible] [6] Եբր. իբրեւ զՏափեթ [7] Եբր. Տափեթայ պղծոյ, վասն ամենայն տանց [8] Եբր. ի գաւթի

Տէր զօրութեանց, Աստուած Իսրայելի.
Ահաւասիկ ես ածեմ ի վերայ քաղաքիդ
այդորիկ եւ ի վերայ ամենայն քաղաքաց
դորա եւ աւանաց զամենայն չարիս զոր
խօսեցայ ի վերայ դորա, զի խստացուցին
զպարանոցս իւրեանց չլսել բանից իմոց ։

## Գլ. Ի

1 Եւ լուաւ Պասքովր որդի Եմմերայ քա-
հանայ , եւ նա էր հրամանատար եւ
իշխան տանն Տեառն , յԵրեմիայէ ի մար-
2 գարէանալն զբանս զայսոսիկ ։ Եւ եհար
Պասքովր զԵրեմիա մարգարէ , եւ [9]ար-
գել զնա ի վերնադրանն , որ էր ի դրանն
Բենիամենի , ի վերնատանն" որ էր ի
3 տան Տեառն ։ Եւ եղեւ ի վաղիւ անդր ,
եհան Պասքովր զԵրեմիա [10]ի վերնա-
դրանէ անտի . եւ ասէ ցնա Երեմիա ,
Ոչ Պասքովր կոչեաց զանուն քո Տէր ,
4 այլ [11]Գերի թափառական" ։ Զի այսպէս
ասէ Տէր. Ահաւադիկ ես տաց զքեզ [12]ի
գերութիւն հանդերձ ամենայն բարե-
կամօք քովք" , եւ անկցին ի սուր թշնա-
մեաց իւրեանց , եւ աչք քո տեսցեն .
[5]եւ զքեզ" եւ զամենայն տունդ Յու-
դայ տաց ի ձեռս թագաւորին Բաբե-
լացւոց , եւ գերեսցեն զնոսա ի Բաբե-
5 լոն , եւ կոտորեսցեն զնոսա սրով ։ Եւ
տաց զամենայն զօրութիւնս քաղաքիդ
այդորիկ եւ զամենայն վաստակս դորա ,
եւ զամենայն պատիւ դորա, եւ զամե-
նայն զանձս [13]թագաւորին Յուդայ տաց
ի ձեռս թշնամեաց իւրեանց . եւ յափշ-
տակեսցեն եւ առցեն զնոսա եւ տար-
6 ցին ի Բաբելոն ։ Եւ դու , Պասքովր , եւ
ամենայն բնակիչք տան քո , երթիջիք
գերի ի Բաբելոն, երթիցես եւ անդ մեռա-
նիցիս , եւ անդ թաղեսցիս , դու եւ ա-
մենայն բարեկամք քո , որոց մարգա-
րէացերն ստութիւն ։
7 Խաբեցեր զիս , Տէր , եւ խաբեցայ ,
յաղթահարեցեր եւ զօրացար . եղէ ի
կատականս, զոր ամենայն [14]հանի ի գլուխ
8 այպանեալ . Զի դառնութեամբ բանից
իմոց արարից այսն զարհամարհու-
թիւն", եւ ի չուառութենէ բողոք բար-

[9] Եբր. արկ զնա ի կոճեղս ի վերնադրանն Բենիամինի [10] Եբր. ի կոճեղաց [11] Եբր. Երկեւղ ամենայն ուստեք [12] Եբր. յերկիւղ քեզ եւ ամենայն բարեկամաց քոց [13] Եբր. թագաւորաց [14] Եբր. ամենեքին նոքա այպն առնեն զիս. (8) Զի քանիցս անգամ եւ խօսիմ, աղաղակեմ ի բռնութենէ

ձիգ. զի եղեւ ինձ բան Տեառն ի նա-
խատինս եւ ի կատականս զօրհանա-
9 պազ: Եւ ասացի, Ոչ [1]անուանեցից
զանուն Տեառն՚՚, եւ ոչ եւս խօսեցայց
յանուն նորա. եւ եղեւ ի սրտի ի-
մում իբրեւ զհուր վառեալ, բորբոքեալ
ընդ ոսկերս իմ. եւ լքայ [2]յամենայն
կողմանց,՚՚ եւ ոչ կարեմ հանդարտել:
10 Զի լուայ զպարսաւանս բազմաց, [3]շուրջ
զինեւ միաբանեալ ժողովելոց. Թէ Ա-
րիք եւ յարիցուք ի վերայ նորա ամե-
նայն արք բարեկամք դորա. հնարեցա-
րուք նմա հնարս՚՚, թերեւս խաբեսցի
եւ յաղթեսցուք նմա, եւ խնդրեսցուք
11 զվրէժ մեր ի նմանէ: Եւ Տէր ընդ իս
էր իբրեւ [4]զպատերազմօղ, եւ զօրացու-
ցանէր. վասն այնորիկ հալածեցին, եւ
իմանալ զինարս ոչ կարէին. յամօթ ե-
ղեն յոյժ, զի ոչ ինչ իմացան՚՚. անար-
գանք նոցա յաւիտենից մի՛ մոռասցին:
12 Եւ Տէր զօրութեանց, որ կշռես զիրա-
ւունս եւ քննես զսիրտս եւ զերիկա-
մունս, տեսից ես ի քէն զվրէժխնդրու-
թիւն ի վերայ նոցա. զի առ քեզ յայտ-
13 նեցի զդատս իմ: Օրհնեցէք զՏէր, գո-
վեցէք զնա, զի փրկեաց զանձն տնան-
կի ի ձեռաց չարաց:
14 Անիծեալ լիցի օրն յորում ծնայ, եւ
օրն յորում ծնաւ զիս մայր իմ՝ մի՛ ե-
15 ղիցի [5]ուխտագրութեան: Անիծեալ լիցի
մարդն որ եբեր աւետիս հօր իմոյ, եւ
ասէ՝ Թէ ծնաւ քեզ արու մանուկ, եւ
16 ուրախութեամբ ուրախ առնէր զնա: Եւ
եղիցի մարդն այն իբրեւ զքաղաքս զոր
կործանեաց Տէր սրտմտութեամբ, եւ ոչ
զղջացաւ. լուիցէ զոյժ ընդ առաւօտս
եւ աղաղակ ի միջօրեայ ժամանակի:
17 Զի ոչ սպան զիս անդէն յարգանդի,
եւ լինէր ինձ մայրն իմ գերեզման, եւ
18 [6]արգանդ յղութեան՚՚ յաւիտենից: Ընդ-
է՞ր է ինձ այս զի ելի յարգանդէ տե-
սանել զցաւս եւ զվաստակս, եւ վախ-
ճանեցան ամօթով աւուրք իմ:

[1] Ոմանք. յիշեցից զնա [2] Ոմանք. ի համբերելոյ [3] Ոմանք. երկեւղ ամենայն ուստեք: Չարախօսեցէք եւ չարախօսեսցուք զնա: Ամենայն այր խաղաղութեան իմոյ, որ դիտէր զգլորումն իմ [4] Ոմանք. զհզօր ահեղ: վասն այնորիկ որ հալածէին զիս՝ գլորեցին, եւ մի՛ կարացին առնուլ. յամօթ եղիցին յոյժ, զի ոչ իմաստութեամբ գնացին [5] Ոմանք. օրհնեալ [6] Ոմանք. արգանդ նորա յղութիւն

## ԳԼ. ԻԱ

1 Բանն որ եղեւ առ Երեմիա ի Տեառնէ,
յորժամ առաքեաց առ նա Սեդեկիա
զՊասքովր որդի Մեղքեայ եւ զՍոփո-
նիա որդի Մաասեայ զքահանայ, եւ ա-
2 սէ, Հարց վասն մեր զՏէր, զի Նաբու-
քոդոնոսոր արքայ Բաբելացւոց եհաս ի
վերայ մեր. թերեւս արասցէ Տէր ի վե-
րայ մեր ըստ ամենայն իւրոց սքան-
չելեաց, եւ դարձուսցէ ի մէնջ:
3 Եւ ասէ ցնոսա Երեմիա, Այսպէս ա-
4 սացէք ցՍեդեկիա. Այսպէս ասէ Տէր
Աստուած Իսրայէլի. Ահաւասիկ ես
դարձուցանեմ զզէնս ձեր ի պատերազ-
մի, զոր ունիք ի ձեռս ձեր, որով դուք
պատերազմիք ընդ արքային Բաբելաց-
ւոց, եւ ընդ Քաղդէացիս որք պաշարե-
ցին զձեզ արտաքոյ պարսպացդ. եւ ժո-
ղովեցից զնոսա ի մէջ քաղաքիդ այ-
5 դորիկ: Եւ տաց պատերազմ ես ինքն ընդ
ձեզ վերացեալ ձեռամբ եւ բարձրա-
ցեալ բազկաւ, սրտմտութեամբ եւ բար-
6 կութեամբ եւ մեծաւ ցասմամբ. Եւ հա-
րից զամենայն բնակիչս քաղաքիդ այ-
դորիկ՝ զմարդ եւ զանասուն՝ մեծաւ
7 մահուամբ, եւ մեռցին: Եւ յետ այնո-
րիկ, այսպէս ասէ Տէր, մատնեցից զՍե-
դեկիա արքայ Յուդայ եւ զծառայս իւր
եւ զժողովուրդ՝ որ մնացեալ իցէ ի քա-
ղաքիդ յայդմիկ ի մահուանէ եւ ի սրոյ
եւ ի սովոյ՝ ի ձեռս Նաբուքոդոնոսորայ
արքայի Բաբելացւոց, եւ ի ձեռս թշնա-
մեաց իւրեանց, եւ ի ձեռս որ խնդրէին
զանձինս նոցա, եւ կոտորեսցեն զնոսա
ի բերան սրոյ. եւ ոչ [7]խնայեսցից ի նո-
սա, եւ ոչ [8]ողորմեսցայց նոցա, եւ ոչ
[9]գթասցայց ի նոսա:
8 Եւ ցժողովուրդն ասասցես, Այսպէս
ասէ Տէր. Ահաւասիկ ես եդի առաջի ե-
րեսաց ձերոց զճանապարհ կենաց եւ
9 զճանապարհ մահու: Որ նստցի ի քա-
ղաքիդ յայդմիկ՝ սրով եւ սովով եւ մա-
հու մեռցի. եւ որ ելցէ կացցէ առաջի
Քաղդէացւոցն, որոց պաշարեալ է զձեզ՝
կեցցէ, [10]անձն իւր ինքեան աւարի լիցի
10 եւ կեցցէ՚՚: Զի հաստատեցի զերեսս իմ
ի վերայ քաղաքիդ այդորիկ ի չարիս, եւ
ոչ ի բարիս, ասէ Տէր. ի ձեռս թագաւո-

[7] Ոմանք. խնայեսցէ [8] Ոմանք. ողորմեսցի [9] Ոմանք. գթասցի [10] Ոմանք. եւ անձն նորա եղիցի իբրեւ զաւար

րին Բաբելացւոց մատնեսցի, եւ այրես-
ցէ զդա հրով։
11 Տուն արքայիդ Յուդայ եւ տունդ Դաւ-
թի, լուարուք զպատգամ Տեառն. այս-
12 պէս ասէ Տէր. Դատեցարուք ընդ ա-
ռաւօտս զատաստան, եւ [1]իրաւացու-
ցէք իրաւունս," փրկեցէք զյափշտա-
կեալն ի ձեռաց զրկողին իւրոյ, զի մի՛
բորբոքեսցի իբրեւ զհուր բարկութիւն
իմ. վառեսցի, եւ ոչ ոք իցէ որ շիջու-
ցանիցէ յերեսաց անիրաւութեան գնա-
13 ցից ձերոց։ Ահա ազիկ ես ի վերայ քո՛
որ բնակեալդ ես ի ծործորս դաշտա-
կանս [2]Տիւրոսի, ասէ Տէր. որք ասէին՛
Ո՞ զարհուրեցուսցէ զմեզ, կամ ո՞ մտա-
14 նիցէ ի բնակութիւնս մեր։ Եւ արարից
այցելութիւն ի վերայ ձեր ըստ [3]չարու-
թեանց գնացից" ձերոց, ասէ Տէր, եւ
վառեցից զհուր յանտառս նորա եւ կե-
րիցէ շուրջ զնովաւ զամենայն։

## ԳԼ. ԻԲ

1 Այսպէս ասէ Տէր. Երթ եւ էջ ի տուն
թագաւորին Յուդայ, եւ խօսեսցիս անդ
2 զբանից զայդ, եւ ասասցես, Լուր զպատ-
գամս Տեառն, թագաւոր Յուդայ, որ
նստիս յաթոռ Դաւթի, դու եւ ծառայք
քո եւ ժողովուրդ քո, որ մտանեն ընդ
3 դրունս ընդ այդոսիկ։ Այսպէս ասէ
Տէր. Արարէք իրաւունս եւ արդարու-
թիւն. փրկեցէք զյափշտակեալն ի ձե-
ռաց զրկողին իւրոյ. զպանդուխտն եւ
զորբն եւ զայրին մի՛ բռնադատէք եւ
մի՛ [4]ամպարշտէք, եւ արիւն անպարտ
4 մի՛ հեղուցուք ի տեղւոջս յայսմիկ։ Զի
թէ առնելով առնիցէք զբանից զայդ, մտցեն
ընդ դրունս տանդ այդորիկ թագաւորք
որ նստիցին յաթոռ Դաւթի, եւ եկա-
նիցեն ի կառս եւ յերիվարս, ինքն եւ
5 ծառայք իւր եւ ժողովուրդ իւր։ Ապա
թէ ոչ առնիցէք զբանից զայդոսիկ,
յանձն իմ երդուայ, ասէ Տէր, զի յա-
6 ւերակ եղիցի տունդ այդ։ Զի այսպէս
ասէ Տէր ի վերայ տան թագաւորին Յու-
դայ. Գաղաադ դու ես ինձ, գլուխ
Լիբանանու. եթէ ոչ եդից զքեզ յաւե-
7 րակ եւ ի քաղաքս չբնակեալս։ Եւ հա-
նից ի վերայ քո սատակիչս, զայր եւ
զտապար իւր, եւ կոտորեսցեն զընտիր
ընտիր մայրից քոց, եւ արկցեն ի հուր։

[1]Յեբր. դատեա [2]Եբր. վիմին [3]Եբր. պտղոյ
գործոց [4]Եբր. յափշտակէք

8 Եւ անցցեն ազգք բազումք ընդ մէջ
քաղաքիդ այդորիկ, եւ ասասցեն իւ-
րաքանչիւր ցընկեր իւր, Ընդէ՞ր արար
9 Տէր այսպէս զայդ քաղաքիդ մեծի։ Եւ
ասասցեն, Փոխանակ զի թողին զուխտ
Տեառն Աստուծոյ իւրեանց, եւ երկիր
պագին աստուածոց օտարաց, եւ ծա-
ռայեցին նոցա։
10 Մի՛ լայք զմեռեալն եւ մի՛ ողբայք
զնա. այլ լացէք լալով ի վերայ այնո-
րիկ որ ելանիցէ, [5]եւ այլ ոչ դառնայ-
ցէ, եւ ոչ տեսցէ զերկիր ազգի իւրոյ։
11 Զի այսպէս ասէ Տէր ի վերայ Սեղ-
ղնեայ որդւոյ Յովսեայ[6], որ թագաւո-
րեաց փոխանակ Յովսեայ հօր իւրոյ.
որ ել ի տեղւոջէդ յայդմանէ, եւ ոչ եւս
12 դարձցի անդրէն. Զի ի տեղւոջ յորում
գերեցին զնա՛ անդ մեռցի, եւ զերկիրդ
զայդ ոչ եւս տեսցէ.
13 Ո՜հ, որ շինէ զտուն իւր՝ եւ ոչ ար-
դարութեամբ, եւ զվերնայարկս իւր՝ եւ
ոչ իրաւամբք. եւ ի մերձաւորէ իւրմէ
գործէ նմա գործ ձրի, եւ զվարձս նո-
14 րա ոչ հատուցանէ նմա։ [7]Զի շինեցեր
քեզ" տուն պատշաճօք, վերնատուն հո-
վանոց յօրինեալ պատուհանիւք, տախ-
տակամածս ի մայրից, ծեփեալ նաւ-
15 թիւ։ Միթէ թագաւորեսցե՞ս զի [8]գայ-
րացար ի մայրակերտս հօր քո. մի՛ կե-
րիցեն եւ մի՛ արբցեն, զի զիրաւունս
եւ զարդարութիւն եւ զբարութիւն ոչ
16 ծանեան, Եւ ոչ արարին իրաւունս
տնանկին, եւ զաղքատին ոչ իրաւացու-
ցին. ո՞չ այն իսկ է չճանաչելն զիս, ա-
17 սէ Տէր։ Ահաւասիկ ոչ իսկ են քո աչք,
եւ սիրտ քո ոչ է ի բարութիւն, այլ"
յագահութիւն եւ ի հեղուլ զարիւն ան-
պարտ, եւ յանիրաւութիւն եւ յասնել
[9]սպանումն։
18 Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր ի
վերայ Յովակիմայ որդւոյ Յովսեայ ար-
քայի Յուդայ. Զայդ զայդ մի՛ կոծես-
ցեն, եւ մի՛ ասասցեն՝ Վա՜յ, վա՜յ, եղ-

[5]Եբր. զի [6]Եբրայեցին յաւելու, արքայի Յու-
դայ [7]Եբր. Որ ասէ, Շինեցից ինձ [8]Եբր.
պնդեալ ես զհետ եղեւնափայտի. միթէ
հայր քո ո՞չ կերաւ եւ արբ եւ արար արդա-
րութիւն եւ իրաւունս, յայնժամ բարի եղեւ
նմա. (16) Արար իրաւունս աղքատին եւ
տնանկի. յայնժամ բարի եղեւ. ո՞չ ապաքէն
այս է գիտել զիս, ասէ Տէր։ (17) Այլ ոչ են
աչք քո եւ սիրտ քո, եթէ ոչ [9]Եբր. բանու-
թիւն

բայր, վա՜յ, վա՜յ, [1]եղբայր. մի՛ կոծեսցեն եւ
սատասցեն՝ Վա՜յ, վա՜յ, Տէր, վա՜յ, վա՜յ[2] սիրե-
19 լի։ Զթաղումն իշոյ թաղեսցի, [3]նենխեալ
ընկեսցի արտաքոյ դրանց Երուսաղեմի։
20 Ել ի Լիբանան եւ գոչեա, եւ ի Բա-
սան տա՛ջիր զձայն քո. աղաղակ բարձ
[4]յայնկոյս ծովուն", զի խորտակեցան ի
21 միասին ամենայն հոմանիք քո։ Խօսե-
ցայ ընդ քեզ [5]ի սխալելն քում, եւ ա-
սացեր թէ Ոչ լուայց քեզ. այդ է ճա-
նապարհ քո ի մանկութենէ քումմէ, զի
22 ոչ լուար բարբառոյ իմոյ։ Զամենայն
հովիւս քո հողմք արածեսցեն, եւ ա-
մենայն հոմանիք քո ի գերութիւն գնաս-
ցեն. զի յայնժամ ամաչեսցես եւ անար-
23 գեսցիս [6]յամենայն սիրելեաց" քոց։ Բնա-
կեալդ ի Լիբանան, [7]ամրացեալդ ի մէջ
մայրից, հեծեծեսցես ի հասանել քեզ
ցաւոց եւ երկանց իբրեւ ծննդականի։
24 Կենդանի եմ ես, ասէ Տէր, եթէ լինե-
լով լինիցի Յեքոնիա որդի Յովակիմայ
արքայի Յուդայ՝ կնիք յաջոյ ձեռին ի-
25 մում, եւ անտի կորզեցից զքեզ. Եւ
մատնեցից զքեզ ի ձեռս խնդրողաց ան-
ձին քո, եւ ի ձեռս այնոցիկ յորոց զար-
հուրէիր յերեսաց նոցա, եւ ի ձեռս Նա-
բուքոդոնոսորայ արքայի Բաբելացւոց,
26 եւ ի ձեռս Քաղդէացւոց. Եւ ընկեցից
զքեզ եւ զմայր քո [8]յերկիր օտար՝ յոր
27 ոչ ի՛ջեր", եւ անդ մեռջիք։ Եւ յերկիրս
յոր [9]ուխտադիր լինիցին ոգւովք իւ-
րեանց" դառնալ այսրէն, մի՛ դարձցին.
28 [10]Զի անկաւ ինքն եւ զաւակ իւր, եւ
եղեւ տարագիր բերանն արհամարհեալ.
թօթափեալ անարգեցաւ այրն Յեքոնիա
իբրեւ զաման մի անպիտան, անկաւ
29 յերկիր զոր ոչ գիտէր" Երկիր, երկիր,
30 երկիր, լուր զպատգամս Տեառն։ Այս-
պէս ասէ Տէր. Գրեա զայրդ զայդ այր
[11]տարագիր. զի մի՛ աճեսցէ յաւուրս
իւր, եւ մի՛ աճեսցէ" ի զաւակէ զորա

[1] Օրբ. քոյր [2] Օրբ. փառաց նորա [3] Օրբ. քարշեալ [4] Օրբ. յԱբարիմայ [5] Օրբ. ի յաջողութեան [6] Օրբ. վասն ամենայն չարեաց [7] Օրբ. որ ունիս բոյն [8] Օրբ. որ ծնաւ զքեզ՝ յերկիր օտար յորում ոչ ծնայք [9] Օրբ. ցանկան [10] Օրբ. Միթէ անօթ անարգ բեկեա՞լ իցէ այրս այս Յեքոնիա, կամ ամա՞ն յորում չիք հաճութիւն. ընդէ՞ր ընկեցան նա եւ զաւակ նորա եւ եղեն փարատանդի յերկիր զոր ոչ գիտէին։ [11] Օրբ. անզաւակ, այր որ ոչ յաջողեսցի յաւուրս իւր. զի մի՛ յաջողեսցի

այր, որ նստիցի յաթոռն Դաւթի [12]իշ-
խան սանն Յուդայ"։

## ԳԼ. ԻԳ

1 [13]Ո՛ հովիւք" որ կորուսին եւ ցրուեցին
2 զխաշինս արօտի [14]քո, ասէ Տէր։ Վասն
այդորիկ այսպէս ասէ Տէր Աստուած
Իսրայելի ի վերայ հովուացդ որ հովուեն
զժողովուրդ իմ. դուք ցրուեցէք զխա-
շինս իմ, եւ մերժեցէք զնոսա, եւ ոչ
[15]յանձանձեցէք զնոսա. արդ ահաւասիկ
ես խնդրեցից զվրէժս ի ձէնջ" ըստ չա-
3 րութեան գնացից ձերոց, ասէ Տէր. Եւ
ես [16]ընկալայց զմնացորդս ժողովրդեան
իմոյ" յամենայն երկրէ ուր մերժեցի զնո-
սա անդր, եւ [17]հաստատեցից զնոսա յա-
րօտս իւրեանց, աճեսցեն եւ բազմասցին։
4 Եւ յարուցից[18] հովիւս որ հովուեսցեն նո-
ցա, եւ ոչ եւս երկիցեն, եւ ոչ եւս զար-
հուրեսցին, եւ ոչ լիցին անտես, ասէ Տէր։
5 Ահա աւուրք գան, ասէ Տէր, եւ յա-
րուցից Դաւթի Ծագումն արդարու-
թեան. եւ թագաւորեսցէ թագաւոր,
եւ [19]ի միտ առցէ", եւ արասցէ իրաւունս
6 եւ արդարութիւն ի վերայ երկրի։ Յա-
ւուրս նորա փրկեսցի Յուդա, եւ Իս-
րայէլ բնակեսցէ [20]յուսով. եւ այս է ա-
նուն նորա զոր [21]կոչեսցէ նմա Տէր՝ Յով-
սեդեկ ի մարգարէս" արդարութիւն մեր։
7 Վասն այդորիկ ահա աւուրք գան, ա-
սէ Տէր, եւ ոչ եւս ասասցեն՝ եթէ
Կենդանի է Տէր, որ եհան [22]զորդիսն Իս-
8 րայելի յերկրէն Եգիպտացւոց, Այլ թէ
Կենդանի է Տէր՝ որ եհան [23]զամենայն
զաւակ" Իսրայելի յերկրէն հիւսիսոյ,
եւ յամենայն աշխարհաց ուր մերժեաց
զնոսա անդր. եւ [24]պատսպարեցոյց զնո-
9 սա անդրէն յերկիր" իւրեանց։ Ի վերայ
մարգարէից բեկաւ սիրտ իմ յիս, շար-
ժեցան ամենայն ոսկերք իմ. եւ եղէ
իբրեւ զայր մի աղճատեալ, եւ իբրեւ
զայր մի չարալլուկ ի գինւոյ, յերե-
սաց Տեառն, եւ յերեսաց [25]մեծվայելչու-
10 թեան փառաց" նորա։ Զի լցաւ երկիր

[12] Օրբ. եւ իշխեսցէ այլ եւս ի Յուդա [13] Օրբ. Վա՜յ հովուաց [14] Օրբ. իմոյ [15] Օրբ. այց արարէք նոցա. արդ աւասիկ ես այց արարից ձեզ [16] Օրբ. ժողովեցից զմնացորդս խաշանց իմոց [17] Օրբ. դարձուցից [18] Օրբ. յարուցից յաւելոս, ի վերայ նոցա [19] Օրբ. վարեսցի իմաստութեամբ [20] Օրբ. յապահովս [21] Օրբ. կոչեսցեն, Տէր [22] Օրբ. զորդիսն [23] Օրբ. եւ ած զզաւակ տանն [24] Օրբ. բնակեսցեն յերկրին [25] Օրբ. բանից սրբութեան

չնացողք, զի յերեսաց երդման սուգ
առ երկիր, ցամաքեցան արօտք անա-
պատի, և եղեն ընթացք նոցա ի չա-
րութիւն, և ուժգնութիւն նոցա ոչ
11 [1]այնպէս: Զի մարգարէ և քահանայ
պղծեցան, և ի տան իմում գտի զչա-
12 րիս նոցա, ասէ Տէր: Վասն այնորիկ
եղիցի ճանապարհն նոցա նոցին ի գայ-
թակղութիւն ի մէգի, գայթակղեսցին
և կործանեսցին ի նմին. զի ածից ի
վերայ նոցա չարիս յամի այցելութեան
իւրեանց, ասէ Տէր:
13 Եւ ի մարգարէսն Շամրնի տեսի անօ-
րէնութիւն. զի մարգարէացան ի ձեռն
Բահաղու, և մոլորեցուցին զժողովուրդ
14 իմ զԻսրայէլ: Եւ ի մարգարէսն Երու-
սաղեմի տեսի արհաւիրս. զի շնային և
երթային զհետ ստութեանց, և օգնա-
կան լինէին ձեռաց չարաց, առ ի չդառ-
նալոյ իւրաքանչիւր ումեք ի ճանապար-
հէ իւրմէ չարէ. եղեն ինձ ամենեքին
իբրև զՍոդոմ, և բնակիչք նորա իբ-
15 րև զԳոմոր: Վասն այնորիկ այսպէս
ասէ Տէր զօրութեանց ի վերայ մար-
գարէիցն. Ահաւասիկ ես ջամբեցից զոցա
[2]ցաւս, և արբուցից զոցա ջուր դառնու-
թեան. զի ի մարգարէիցն Երուսաղեմի
ել պղծութիւն ընդ ամենայն երկիր:
16 Այսպէս ասէ Տէր զօրութեանց. Մի՛
լսէք բանից մարգարէիցն որ մարգա-
րէանան ձեզ. զի զրարանեն զքա ձեզ,
զտեսիլն սրտից իւրեանց խօսին, և ոչ
17 ի բերանոյ Տեառն: Ասեն ապստամբե-
լոցն ի բանէն Տեառն, Թէ Խաղաղու-
թիւն եղիցի ձեզ. և [3]ամենեցուն որ
գնան ըստ կամաց իւրեանց, և՝՝ ամե-
նայնի որ գնայ ըստ մոլորութեան սրտի
իւրոյ, ասեն, Ոչ եկեսցէ ի վերայ քո
18 չար: Զի ո՞վ եկաց [4]ի հաստատութեան
Տեառն, և ետես և լուաւ զբան նո-
րա. ո՞վ ունկն եդ բանի [5]իմում և լուաւ:
19 Ահաւադիկ շարժումն ի Տեառնէ, և
բարկութիւն մրրկեալ շարժմամբ եկեսցէ
20 ի վերայ ամպարշտաց: [3]Եկեսցէ և՝՝ մի՛
դարձցի սրտմտութիւն Տեառն, մինչև
արասցէ և հաստատեսցէ զյօժարու-
թիւն սրտի [6]նորա. յետին ժամանակս
21 [7]իմասցին զայն իմանալով: Ոչ առա-
քեցի զմարգարէսն, և նոքա ընթանա-
յին. ոչ խօսեցայ ընդ նոսա, և նոքա
22 մարգարէանային: Եթէ կացեալ էր [4]ի
հաստատութեան իմում, և լուացեալ
էր զբանս իմ ժողովրդեան իմում, և
դարձուցեալ էր զնոսա ի ճանապարհաց
իւրեանց չարաց, և ի գնացից նոցա
չարաց:
23 Աստուած մերձաւո՞ր եմ ես, ասէ
24 Տէր, և ո՞չ Աստուած հեռաւոր: Եթէ
թաքիցէ՞ մարդ ի թաքստեան, և ես
ոչ տեսից զնա, ասէ Տէր. միթէ զեր-
կինս և զերկիր ես ո՞չ լնուցում, ասէ
25 Տէր: Լուայ զինչ խօսին մարգարէքն՝
որ մարգարէանային յանուն իմ սուտ՝
26 և ասէին, Երազ յերազեցայ ինձ: Մին-
չև յե՞րբ լինիցի ի սրտի մարգարէիցդ
որ մարգարէանան ստութիւն. և ի մար-
գարէանալ [8]զկամս սրտից իւրեանց,
27 Խորհին՝՝ մոռանալ ժողովրդեան իմոյ [9]զօ-
րէնս իմ երազովք իւրեանց, զոր պատ-
մէին իւրաքանչիւր ընկերի իւրում,
զոր օրինակ մոռացան հարքն նոցա զա-
28 նուն իմ ի ձեռն Բահաղու: Մարգարէն
յորում երազն իցէ՝ պատմեսցէ զերազն
իւր, և յորում բանն իմ իցէ՝ պատ-
մեսցէ զբանն իմ ճշմարտութեամբ. զի՞նչ
29 է յարդ առ ցորենաւ, ասէ Տէր: Ո՞չ ա-
պաքէն բանք իմ իբրև զհուր են, ասէ
Տէր, և իբրև զմուրճ որ հատանէ
30 զվէմ: Վասն այդորիկ ահա ես ի վերայ
մարգարէիցդ, ասէ Տէր, որք գողանան
զբանս իմ իւրաքանչիւր յընկերէ իւ-
31 մէ: Ահաւասիկ ես ի վերայ մարգա-
րէիցդ, ասէ Տէր, որք [10]մերժեն զմար-
գարէս ի լեզուոյ, և նիրհեն զնիրհս
32 իւրեանց՝՝: Ահաւասիկ ես ի վերայ
մարգարէիցդ որ մարգարէանան ե-
րազս ստութեան, ասէ Տէր, և պատ-
մեն զայն, և մոլորեցուցանեն զժո-
ղովուրդն իմ ստութեամբ իւրեանց և
մոլորութեամբ իւրեանց. և ես ոչ ա-
ռաքեցի զնոսա, և ոչ պատուիրեցի
նոցա. և օգտութիւն ինչ ոչ օգտես-
ցեն ժողովրդեանդ այդմիկ, ասէ Տէր:
33 Եւ եթէ հարցանիցէ զքեզ ժողովուրդդ
այդ, կամ մարգարէ կամ քահանայ, և
ասասցէ, Զի՞նչ է [11]առածդ Տեառն. և
ասասցես ցնոսա, [12]Դուք էք առածն. և

[1]Եբր. է ուղիղ [2]Եբր. աւշինդր [3]3Եբր. պակասէ
[4]Եբր. ի խորհրդեան [5]Եբր. նորա [6]Եբր. իւրոյ
[7]Եբր. իմասջիք

[8]Եբր. զնենգութիւն սրտից իւրեանց. (27) Խորհին
տալ [9]Եբր. զանուն [10]Եբր. փարեն զլեզուս իւր-
եանց և ասեն, Նա ասէ [11]Կամ, պատգամ, կամ,
բեռն [12]Եբր. Զի՞նչ պատգամ. և թողից

34 կործանեցից" զնա, ասէ Տէր։ Եւ մար-
գարէ եւ քահանայ եւ ժողովուրդ՝ որ
ասիցեն [1]Առած Տեառն, խնդրեցից զվրէժ
ի մարդոյն յայնմանէ եւ ի տանէ նորա։
35 [2]Զի՞ ոչ նոյնպէս" ասիցէք իւրաքան-
չիւր ցընկեր իւր եւ իւրաքանչիւր ցեղ-
բայր իւր՝ թէ Զի՞նչ պատասխանի ա-
36 րար Տէր, եւ զի՞նչ խօսեցաւ Տէր։ Եւ
[1]առած Տեառն մի՛ եւս անուանէք, զի
[1]առած Տեառն եղիցի մարդոյ բանն նո-
րա. եւ [3]դարձուցանիցէք զբանս Ա-
ստուծոյ կենդանւոյ՝ Տեառն զօրութեանց
37 Աստուծոյ մերոյ։ Այլ այսպէս ասասջիք
ցմարգարէն, Զի՞նչ արար քեզ պատաս-
խանի Տէր, եւ զի՞նչ խօսեցաւ Տէր։
38 Եթէ [1]առած Տեառն ասիցէք, վասն այ-
դորիկ այսպէս ասէ Տէր. Փոխանակ զի
ասացէք զբանդ՝ [1]առած Տեառն, եւ ես
առաքեցի առ ձեզ՝ ասել, Մի՛ ասիցէք
39 [1]առած Տեառն, Վասն այդորիկ ահա-
ւասիկ ես [4]առից զձեզ առիւ", եւ կոր-
ծանեցից զձեզ եւ զքաղաքդ զոր ետու
ձեզ եւ հարցն ձերոց յերեսաց իմոց.
40 Եւ տաց ի վերայ ձեր նախատինս յա-
ւիտենից, եւ անարգանս յաւիտենից՝
որ ոչ մոռասցին։

## ԳԼ. ԻԴ

1 Եւ եցոյց ինձ Տէր երկուս կողովս թզոյ,
որ կային առաջի տաճարին Տեառն.
յետ զերելոյն Նաբուքոդոնոսորայ ար-
քային Բաբելացւոց զՅեքոնիա որդի
Յովակիմայ արքայի Յուդայ, եւ զիշ-
խանս Յուդայ, եւ [5]զարուեստագէտսն
եւ զկալանաւորականսն եւ զմեծամեծս"
յԵրուսաղեմէ, եւ տարաւ զնոսա ի Բա-
2 բելոն։ Կողով մի յոյժ քաղցր թզոյ՝ իբ-
րեւ զկանխահաս թզոյ, եւ կողովն երկ-
րորդ՝ ժանտահամ թզոյ, որ ոչ ուտիցի
3 ի ժանտութենէ իւրմէ։ Եւ ասէ ցիս Տէր,
Զի՞նչ տեսանես, Երեմիա. եւ ասեմ,
Թուզ, թուզ քաղցր եւ առաւել քաղցր.
եւ թուզ ժանտ եւ առաւել ժանտ, որ
ոչ ուտիցի ի ժանտութենէ իւրմէ։
4 Եւ եղեւ բան Տեառն առ [6]Երեմիա,
եւ ասէ, Այսպէս ասէ Տէր Աստուած
5 Իսրայէլի. Իբրեւ զթուզդ քաղցր, այս-
պէս ծանեայց զգերեալսդ Յուդայ, զորս
առաքեցի ի տեղւոջէդ յայդմանէ յեր-
6 կիրն Քաղդէացւոց ի բարութիւն. Եւ
հաստատեցից զաչս իմ ի վերայ նոցա ի
բարութիւն, եւ [7]պատսպարեցից զնոսա
ի սոյն երկիր. եւ շինեցից զնոսա եւ
ոչ քակեցից, եւ տնկեցից զնոսա եւ ոչ
7 խլեցից։ Եւ տաց նոցա սիրտ ճանաչել
զիս՝ թէ ես եմ Տէր, եւ եղիցին ինձ ի
ժողովուրդ, եւ ես եղէց նոցա յԱս-
տուած. զի դարձցին առ իս յամենայն
8 սրտէ իւրեանց։ Եւ իբրեւ զթուզդ ժանտ
որ ոչ ուտի ի ժանտութենէ իւրմէ, այս-
պէս ասէ Տէր, այսպէս մատնեցից զՍե-
դեկիա արքայ Յուդայ, եւ զմեծամեծս
նորա, եւ զմնացորդս Երուսաղեմի,
զմնացորդս երկրիդ այդորիկ, եւ զբնա-
9 կեալսն յԵգիպտոս։ Եւ տաց զնոսա [8]ի
ցրումն ընդ ամենայն թագաւորութիւնս
երկրի, եւ ի նախատինս եւ յառակ եւ
յատելութիւն եւ յանէծս յամենայն տե-
10 ղիս ուր մերժեցից զնոսա անդր։ Եւ
առաքեցից ի նոսա սուր եւ սով եւ մահ,
մինչեւ սպառեսցին յերկրէդ զոր ե-
տու նոցա եւ հարց իւրեանց։

## ԳԼ. ԻԵ

1 Բանն որ եղեւ առ Երեմիա վասն ժո-
ղովրդեանն Յուդայ, յամին չորրորդի
Յովակիմայ որդւոյ Յովսեայ արքայի
Յուդայ, այն ամ առաջին էր Նաբու-
քոդոնոսորայ արքային Բաբելացւոց,
2 Զբանն զոր խօսեցաւ Երեմիա մարգա-
րէ առ ամենայն ժողովուրդն Յուդայ,
եւ առ բնակիչս Երուսաղեմի, եւ ասէ,
3 Յերեքտասաներորդէ ամէ Յովսեայ որդ-
ւոյ Ամոնայ արքայի Յուդայ մինչեւ
ցայսօր՝ այս քսանեւերեք ամք, զի ե-
ղեւ բան Տեառն առ իս, եւ խօսեցայ
ընդ ձեզ կանխեալ ընդ առաւօտս եւ ա-
4 սէի, եւ ոչ լուարուք։ Եւ առաքեցի
առ ձեզ զծառայս իմ զմարգարէս ընդ
առաւօտս արձակեալ, եւ ոչ լուարուք,
եւ ոչ անսացէք ականջօք ձերովք լսել։
5 Ասէի, Դարձարուք իւրաքանչիւր ի ճա-
նապարհէ իւրմէ չարէ, եւ ի գնացից
ձերոց չարաց. եւ բնակեսջիք յերկրիդ
զոր ետու ձեզ եւ հարց ձերոց յաւի-
6 տենից մինչեւ յյաւիտեանս. Եւ մի՛ եր-
թայք զհետ աստուածոց օտարաց՝ ծա-
ռայել նոցա եւ երկիր պագանել, եւ
մի՛ բարկացուցանէք զիս գործովք ձեռաց

[1] Կամ, Պատգամ. կամ, Բեռն [2] Եբր. Այսպէս [3] Եբր. եղծէք [4] Եբր. մոռացայց զձեզ մոռանալով [5] Եբր. զհիւսն եւ զդարբին [6] Եբր. իս

[7] Եբր. ածից [8] Եբր. ի ցրումն, ի թշուառութիւն

7 ձեռաց չարչարել զձեզ ։ Եւ ոչ լուարուք
ինձ, ասէ Տէր, զի բարկացուցանիցէք զիս
գործովք ձեռաց ձերոց չարչարել զձեզ ։
8 Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր զօ-
րութեանց . Զի ոչ հաւատացէք բանից
9 իմոց, Ահաւասիկ ես առաքեմ, եւ ա-
ռից զամենայն ազգս հիւսիսոյ, ասէ
Տէր, եւ զՆաբուքոդոնոսոր արքայ Բա-
բելացւոց զծառայ իմ, եւ ածից զնոսա
ի վերայ երկրիդ այդորիկ եւ ի վերայ
բնակչաց դորա, եւ ի վերայ ամենայն
ազգաց որ շուրջ զդովաւ . եւ աւերե-
ցից զդոսա, եւ տաց զդոսա [1]յապակա-
նութիւն եւ ի շչիւն եւ ի նախատինս"
10 յաւիտենից ։ Եւ կորուսից ի դոցանէ
զձայն ուրախութեան եւ զձայն ցնծու-
թեան, եւ զձայն փեսայի եւ զձայն հար-
սին, զձայն երկանի եւ զլոյս ճրագի ։
11 Եւ եղիցի ամենայն երկիրդ այդ յաւե-
րակ եւ յապականութիւն, եւ ծառա-
յեսցեն [2]ազգայն այնոցիկ եւ" արքա-
յին Բաբելացւոց զեւթանասուն ամ ։
12 Եւ ի կատարել ամացն եւթանասնից՝
խնդրեցից զվրէժս ի թագաւորէն Բա-
բելացւոց եւ յազգէն յայնմանէ, ասէ
Տէր, ըստ անօրէնութեանց նոցա, եւ
յերկրէն Քաղդէացւոց . եւ եդից [3]զնո-
13 սա յապականութիւն յաւիտենական ։ Եւ
ածից ի վերայ ամենայն երկրին այնո-
րիկ զամենայն բանս իմ զոր խօսեցայ
վասն նորա՝ ըստ ամենայն գրելոցս ի
գիրս յայսմիկ, զոր մարգարէացաւ Ե-
14 րեմիա ի վերայ ամենայն ազգաց . Զի
[4]ծառայեսցեն ի մէջ նոցա . քանզի եւ
նոքա" ազգք բազումք եւ թագաւորու-
թիւնք մեծամեծք [5]են, եւ հատուցից
նոցա ըստ անօրէնութեանն նոցա, եւ
ըստ գործոց ձեռաց նոցա ։
15 Զի այսպէս ասէ ցիս Տէր Աստուած
Իսրայէլի . Առ զբաժակ գինւոյս [6]անա-
պակիս այսորիկ ի ձեռաց իմոց, եւ ար-
բուսցես զդա ամենայն ազգաց առ որս
16 առաքեմ զքեզ . Արբցեն, եւ [7]քամես-
ցեն, եւ մոլեգնեսցին յերեսաց սրոյն, զոր
17 ես առաքեցից ի մէջ դոցա ։ Եւ առի
զբաժակն ի ձեռանէ Տեառն, եւ ար-
բուցի ամենայն ազգաց առ որս առա-
18 քեաց զիս Տէր . Երուսաղեմի եւ քա-
ղաքացն Յուդայ, եւ թագաւորաց նո-
րա եւ իշխանաց նորա, դնել զնոսա
յաւերակ եւ յանապատ եւ ի շչիւն եւ
19 յանէծս ըստ աւուրս ըստ այսմիկ . Եւ
Փարաւոնի արքայի Եգիպտացւոց, եւ
ծառայից նորա եւ մեծամեծաց նորա,
20 եւ ամենայն ազգի նորա, Եւ ամենայն
խառնիճաղանճ զօրաց նորա . եւ ամե-
նայն թագաւորաց [8]կղզւոյն, եւ ամե-
նայն թագաւորաց երկրին այլազգեաց՝
Ասկաղոնի եւ Գազայ եւ Ակկարոնի,
21 եւ մնացորդացն Ազովտայ, Եւ Եդովմայ
եւ Մովաբացւոցն եւ որդւոցն Ամո-
22 նայ, Եւ ամենայն թագաւորացն Տիւ-
րոսի, եւ ամենայն թագաւորացն Սի-
դոնացւոց, եւ թագաւորաց կղզւոյն
23 որ յայն կոյս ծովուն . Եւ Դեդանայ, եւ
Թեմանայ, եւ Բուզայ, եւ ամենայն
24 յապաւելոցն զերեսօք . Եւ ամենայն
թագաւորացն Արաբացւոց, եւ ամենայն
թագաւորաց խառնաղանճից՝ օթագայե-
25 լոցն յանապատին . Եւ ամենայն թա-
գաւորացն Զամբրեայ, եւ ամենայն թա-
գաւորացն Եղամայ, եւ ամենայն թա-
26 գաւորացն Պարսից . Եւ ամենայն թա-
գաւորացն հիւսիսոյ [8]արեւելից, մեր-
ձաւորաց եւ հեռաւորաց իւրաքանչիւր
առ եղբօր իւրում, եւ ամենայն թագա-
ւորաց երկրի, որ ի վերայ երեսաց եր-
կրի . եւ թագաւորն Սեսակ արբցէ յետ
27 ամենեցուն ։ Եւ ասասցես ցնոսա, Այս-
պէս ասէ Տէր ամենակալ Աստուած Իս-
րայէլի . Արբէք եւ արբեցարուք, [9]յի-
մարեցարուք, եւ կործանեցարուք եւ
մի՛ կանգնեսջիք յերեսաց սրոյն զոր ես
28 առաքեցից ի մէջ ձեր ։ Եւ եղիցի յոր-
ժամ ոչ կամիցին ընդունել զբաժակն ի
ձեռանէ քումմէ ըմպել, ասասցես ցնո-
սա, Այսպէս ասէ Տէր զօրութեանց .
29 Ըմպելով արբջիք . Զի ահա ի քաղաքէն՝
յորում կոչեցեալ է անուն իմ ի նմա,
արարից սկիզբն չարչարելոյ, եւ դուք
սրբելով սրբեցի՞ք . ոչ սրբեսջիք . զի
սուր կոչեցից ես ի վերայ ամենեցուն որ
բնակեալ են յերկրի, ասէ Տէր զօրու-
30 թեանց ։ Եւ դու մարգարէասցես ի վե-
րայ նոցա զամենայն զպատգամս զայ-
սոսիկ, եւ ասասցես ցնոսա, Տէր [10]ի
բարձանց ի սրբութենէ իւրմէ տացէ

[1] Եբր. յապշութիւն եւ ի շչիւն եւ յաւերումն
[2] Եբր. ազգքն այնոքիկ [3] Եբր. զնա [4] Եբր. և զնոսա ծառայեցուսցեն [5] Յ Եբր. ղոխոտէ
[6] Եբր. ցասմանս [7] Եբր. խռովեսցին
[8] Եբր. երկրին Հուս [9] Եբր. եւ փսխեցէք [10] Եբր. ի բարձանց գոչեսցէ, եւ ի բնակութենէ սրբութեան իւրոյ տացէ զձայն իւր. գոչելով

հրաման, տացէ զձայն իւր, զբան հրամանի ի տեղւոջէ իւրմէ. եւ նոքա իբրեւ կթօղք տացեն պատասխանի ի վերայ ամենայն բնակչաց երկրի, թէ եկն
31 սատակումն ի կողմանէ երկրին. Զի դատաստան Տեառն է ի մէջ ազգաց, եւ դատեսցի ինքն զամենայն մարմին. եւ ամպարիշտք տուան" ի սուր, ասէ Տէր։
32 Այսպէս ասէ Տէր զօրութեանց. Ահաւադիկ չարիք գան յազգէ ի վերայ ազգի, եւ մրրիկ մեծ ելցէ ի ծագաց
33 երկրէ։ Եւ եղիցին վիրաւորք ի Տեառնէ յաւուր [1]Տեառն՝ ի կողմանէ մինչեւ ցկողմն երկրին. մի՛ կոծեսցին եւ մի՛ ժողովեսցին[2], ընդ երեսս դաշտին իբրեւ զաղբ ընկեսցին։
34 Գուժեցէք, հովիւք, եւ աղաղակեցէք, եւ [3]կոծեցարուք, խոյք մաքեաց". զի կատարեցան աւուրք ձեր ի սպանումն եւ ի ցրումն ձեր. կործանեսջիք
35 իբրեւ [4]խոյք ընտիրք։ Եւ կորիցէ փախուստ ի հովուաց, եւ փրկութիւն ի
36 [5]խոյոցն մաքեաց"։ Ձայն գուժի հովուաց, եւ աղաղակ [5]խոյոցն մաքեաց". զի սպա-
37 ռեաց Տէր զարօտս նոցա։ Եւ [6]դադարեսցէ զեղեցկութիւն" խաղաղութեանն յերեսաց բարկութեան սրտմտութեան
38 Տեառն։ [7]Թողին իբրեւ առեւծ զմորի իւր, [8]եւ եղեւ երկիր նոցա յանապատ՝ յերեսաց բարկութեան սրտմտութեան սրոյն մեծի, եւ յերեսաց բարկութեան սրտմտութեան նորա։

## ԳԼ. ԻԶ

1 Ի սկզբան թագաւորութեան Յովակիմայ որդւոյ Յովսեայ արքայի Յուդայ՝ եղեւ բանս այս ի Տեառնէ, եւ ասէ,
2 Այսպէս ասէ Տէր. Կաց [9]ի սրահի տանն Տեառն, եւ մարգարէասցիս ամենայն տանն" Յուդայ որք գային երկիր պագանել ի տանն Տեառն՝ զամենայն բանս զոր [10]կարգեցի առ քեզ մարգարէանալ" նոցա. մի՛ հատանիցես ինչ ի բանից։
3 Թերեւս լուիցեն եւ դարձցին իւրաքանչիւր ի ճանապարհէ իւրմէ չարէ, եւ մեղմացայց ես ի չարեացն զոր խորհիմ ես առնել նոցա վասն չարութեան
4 գնացից նոցա։ Եւ ասասցես ցնոսա, Այսպէս ասէ Տէր. Եթէ ոչ լուիցէք ինձ գնալ յօրէնս իմ զոր ետու յանդիման
5 ձեր, Լսել բանից ծառայից իմոց մարգարէից՝ զոր ես առաքեցի առ ձեզ կանխաւ. եւ առաքեցի, եւ ոչ լուարուք.
6 Եւ տացից զտունդ զայդ իբրեւ զՍելովմ, եւ զքաղաքս զայս տաց յանէծս ամենայն ազգաց երկրի։
7 Եւ լուան քահանայքն եւ [11]սուտ մարգարէքն եւ ամենայն ժողովուրդն ի խօսել Երեմիայի զբանս զայսոսիկ ի տանն
8 Տեառն։ Եւ եղեւ ի դադարել Երեմիայի ի խօսիցն՝ ըստ ամենայնի զոր հրամանեաց նմա Տէր խօսել առ ամենայն ժողովուրդն, կալան զնա քահանայքն եւ [11]սուտ մարգարէքն եւ ամենայն ժողովուրդն, եւ ասեն, Մահու մեռցիս.
9 Զի՞ մարգարէացար յանուն Տեառն եւ ասացեր՝ թէ Որպէս զՍելովմ եղիցի տունս այս, եւ քաղաքս աւերեսցի ի բնակչաց. եւ կուտեցաւ ժողովուրդն ի վե-
10 րայ Երեմիայի ի տան Տեառն։ Եւ լուան իշխանքն Յուդայ զբանս զայսոսիկ, եւ ելին ի տանէ թագաւորին ի տունն Տեառն, եւ նստան առաջի դրան Տեառն
11 նորոյ։ Եւ ասեն քահանայքն եւ [11]սուտ մարգարէքն ցիշխանսն եւ ցամենայն ժողովուրդն, Դատաստան մահու է առնդ այդմիկ, զի մարգարէացաւ զքաղաքէս զայսմանէ, որպէս ձերովք իսկ ականջօք լուարուք։
12 Եւ ասէ Երեմիա ցամենեսին ցիշխանսն եւ ցամենայն ժողովուրդն, Տէր առաքեաց զիս մարգարէանալ ի վերայ տանդ այդորիկ եւ ի վերայ քաղաքիս զամե-
13 նայն բանս զոր լուարուք։ Եւ արդ ուղղեցէք զճանապարհս ձեր եւ զգործս ձեր, եւ լուարուք ձայնի Տեառն Աստուծոյ ձերոյ, եւ մեղմասցի Տէր ի չա-
14 րեացն զոր խօսեցաւ ի վերայ ձեր։ Եւ ես աւասիկ կամ ի ձեռս ձեր, արարէք

---

գոռասցէ ի վերայ արօտի իւրոյ, իբրեւ ի գօչիւն կթողաց տացէ պատասխանի ամենայն բնակչաց երկրի։ (31) Եկն աղաղակ մինչեւ ի ծագս երկրի. զի դատաստան Տեառն է ընդ ազգս, վարեսցէ նա դատ ընդ ամենայն մարմնոյ, եւ զամբարիշտս մատնեսցէ [1]Եբր. յայնմիկ [2]Եբր. ոչ ողբասցին, եւ մի՛ թաղեսցին [3]Եբր. ընդ հող թաւալեսջիք, ընտիրք խաշին [4]Եբր. անօթք [5]Եբր. պատուականաց խաշին [6]Եբր. լռեցին բնակութիւնք [7]Եբր. Եթող [8]Եբր. զի [9]Եբր. ի գաւթի տանն Տեառն, եւ խօսեսցիս առ ամենայն քաղաքս

[10]Եբր. պատուիրեցի քեզ խօսել [11]Յեբր. զոյակէ

ընդ խս որպէս եւ [1]ձեզ օգուտ եւ լաւ
15 իցէ"։ Բայց գիտելով գիտասջիք, զի
թէ սպանանէք դուք զիս, արիւն ան-
պարտ արկանէք ի վերայ ձեր եւ ի վե-
րայ քաղաքիս այսորիկ եւ ի վերայ բնակ-
չաց սորա. զի ճշմարտութեամբ առա-
քեաց զիս Տէր առ ձեզ, խօսել յականջս
ձեր զամենայն բանս զայսոսիկ։
16 Եւ ասեն իշխանքն եւ ամենայն ժո-
ղովուրդն ցքահանայս եւ ցմարգա-
րէսն, Ոչ է դատաստան մահու առն
այդորիկ, զի յանուն Տեառն Աստուծոյ[2]
17 խօսեցաւ առ մեզ։ Յոտն կացին արք
ի ծերոց երկրին, եւ ասեն ցամենայն ժո-
18 ղովս ժողովրդեան, Միքիէ Մորասթացի
մարգարէանայր յաւուրս Եզեկիայ ար-
քայի Յուդայ. խօսեցաւ ընդ ամենայն
ժողովրդեանն Յուդայ եւ ասէ, Այսպէս
ասէ Տէր զօրութեանց. Սիոն իբրեւ
զագարակ արօրագիր լիցի, եւ Երու-
սաղէմ իբրեւ [3]զհնձանս մրգապահաց, եւ
լեառն տանն եղիցի իբրեւ զանտառ
19 մայրւոյ"։ Միթէ սպանանելով սպանի՞ն զնա
Եզեկիա արքայ Յուդայ եւ ամենայն
Հրէաստան. ո՞չ ապաքէն զահի [4]հարան ի
Տեառնէ, եւ խնդրեցին յերեսաց" Տեառն.
եւ զղջացաւ Տէր յամենայն չարեացն
զոր խօսեցաւ ի վերայ նոցա. եւ մեք
արարաք չարիս մեծամեծս յանձինս մեր։
20 Եւ այր մի մարգարէանայր յանուն
Տեառն, Ուրիա որդի Սամեայ ի Կարիա-
թարիմայ. եւ մարգարէացաւ ի վերայ
քաղաքիս այսորիկ, եւ ի վերայ երկրիս
այսորիկ ըստ ամենայն բանից Երեմիա-
21 յի։ Եւ լուաւ արքայ Յովակիմ, եւ ա-
մենայն զօրաւորք իւր եւ ամենայն իշ-
խանք զամենայն բանս նորա, եւ [5]խնդրէին
սպանանել զնա. եւ լուաւ Ուրիա, եր-
կեաւ եւ փախեաւ եւ գնաց յերկիրն Ե-
22 գիպտացւոց։ Եւ առաքեաց արքայ Յո-
վակիմ արս յԵգիպտոս. զԵղնաթան որ-
դի Աքովբերայ եւ արս ընդ նմա յԵ-
23 գիպտոս. Եւ հանին զնա անտի եւ ա-
ծին առ արքայն Յովակիմ, եւ սպան զնա
սրով, եւ ընկէց ի շիրիմ որդւոց ժո-
24 ղովրդեան իւրոյ։ Բայց ձեռն Աքիկա-
մայ որդւոյ Սափանայ էր ընդ Երեմիա-
յի, զի մի՛ մատնեսցի ի ձեռս ժողովըր-
դեանն սպանանել զնա։

ԳԼ. ԻԷ

1 Ի սկզբան թագաւորութեանն Յովակի-
մայ որդւոյ Յովսեայ արքայի Յուդայ
եղեւ բանս այս առ Երեմիա ի Տեառնէ,
2 եւ ասէ, Այսպէս ասէ Տէր ցիս. Արա
դու քեզ կապանս եւ անուրս, եւ արկ
3 ընդ պարանոց քո. Եւ առաքեսցես զայն
առ թագաւորն Եդովմայեցւոց, եւ առ
թագաւորն Մովաբացւոց, եւ առ թա-
գաւոր որդւոյն Ամոնայ, եւ առ թա-
գաւորն Տիւրոսի, եւ առ թագաւորն
Սիդոնացւոց, ի ձեռն հրեշտակաց նոցա
որ գան յԵրուսաղէմ առ Սեդեկիա ար-
4 քայ Յուդայ. Եւ պատուիրեսցես նոցա
ասել ցտեարս իւրեանց, Այսպէս ասէ
Տէր զօրութեանց Աստուած Իսրայելի.
5 Այսպէս ասասջիք ցտեարսն ձեր. Ես
արարի զերկիր եւ զմարդիկ եւ զանա-
սուն, եւ որ ինչ ի վերայ երեսաց երկ-
րի զօրութեամբ իմով մեծաւ եւ բազ-
կաւ իմով բարձու. եւ տաց զնա ում
6 եւ կամ իցէ առաջի աչաց իմոց։ Եւ արդ
ես եմ որ ետու զամենայն [6]երկիր ի
ձեռս Նաբուքոդոնոսորայ արքային Բա-
բելացւոց ծառայի իմոյ, նա եւ զգա-
զանս անապատի [7]ի գործ արկանել, եւ"
7 ետու նմա ի ծառայութիւն։ Եւ ծառա-
յեսցեն նմա ամենայն ազգք, եւ որդ-
ւոյ նորա եւ որդւոյ որդւոյ նորա, մին-
չեւ եկեսցէ ժամանակ [8]բարկութեան
երկրի նորա, եւ ծառայեսցեն նմա"
ազգ բազումք եւ թագաւորք մեծա-
8 մեծք։ Եւ եղիցի՝ ազգ եւ թագաւո-
րութիւն որ ոչ ծառայեսցեն Նաբուքո-
դոնոսորայ արքայի Բաբելացւոց, եւ
որք միանգամ ոչ մուծցեն զպարանոցս
իւրեանց ընդ լծով արքային Բաբելաց-
ւոց, սրով եւ սովով եւ մահուամբ ա-
բարից այցելութիւն ի վերայ ազգին այ-
նորիկ ասէ Տէր, մինչեւ [9]սատակեսցին
ի ձեռաց" նորա։
9 Եւ դուք մի՛ լսէք մարգարէից ձերոց
եւ ըղձութեանց ձերոց եւ երազոց ձե-
րոց եւ կիւսից ձերոց եւ [7]հաւա-
հմայից ձերոց եւ" կախարդաց ձերոց,
որք ասեն ձեզ թէ Ոչ հարկիցէք

[1]Եբր. լաւ եւ ուղիղ իցէ յաչս ձեր [2]Եբր. յեհովին յաւիտենին, մերոյ [3]Եբր. զկոյտս աւերակաց, եւ լեառն տանդ եղիցի իբրեւ զբարձրաւանդակ անտառի [4]Եբր. Հարաւ նա ի Տեառնէ և եկաց յաղօթս առաջի [5]Եբր. խնդրեաց արքայ

[6]Եբր. երկիրս զայսոսիկ [7]Յեբր. դ-ֆ--ե [8]Եբր. երկրի նորա. եւ արասցեն զնա ծառայ [9]Եբր. սատակել ինձ զնոսա ի ձեռն

10 արքային Բաբելացւոց. Զի սուտ մար-
գարէանան դոքա ձեզ՝ առ ի հեռացու-
ցանելոյ զձեզ յերկրէդ ձերմէ, եւ ցրուե-
11 լոյ զձեզ եւ կորիջիք: Եւ ազգ որ մու-
ծանիցէ զպարանոց իւր ընդ լծով ար-
քային Բաբելացւոց, եւ կացցէ նմա ի
հարկի՝ թողից զնա յերկրի իւրում, ա-
սէ Տէր, եւ գործեսցէ զնա եւ բնակեսցէ
ի նմա:
12 Եւ առ Սեդեկիա արքայ Յուդայ խօ-
սեցայ ըստ ամենայն բանիցս այսոցիկ,
եւ ասեմ, Մուծէք զպարանոցս ձեր ընդ
լծով արքային Բաբելացւոց, եւ ծառա-
յեցէք նմա եւ ազգի նորա, եւ կեցջիք:
13 Եւ ընդէ՞ր մեռանիք, դու եւ ժողովուրդ
քո, սրով եւ սովով եւ մահուամբ, որ-
պէս եւ խօսեցաւ Տէր առ ազգ, որ ոչ
14 ծառայեսցէ արքային Բաբելացւոց: Մի՛
լսէք բանից մարգարէիցն որ ասեն ձեզ՝
թէ [1]Մի՛ հարկիք՝՝ արքային Բաբելաց-
ւոց. զուր մարգարէանան նոքա ձեզ:
15 Զի ոչ առաքեցի զնոսա, ասէ Տէր, եւ
նոքա մարգարէանան յանուն իմ սուտ
առ ի կորուսանելոյ զձեզ. եւ կորիցէք
դուք եւ մարգարէքդ, որ մարգարէա-
նան ձեզ [2]տարապարտուց ստութեամբ:՝՝
16 Եւ ցքահանայս եւ ցամենայն ժողո-
վուրդն՝ [3]զոր խօսեցայ ասացեա՝՝, Այս-
պէս ասէ Տէր. Մի՛ լսէք բանից մար-
գարէիցն որ մարգարէանան ձեզ եւ ա-
սեն, Ահա սպասք տանն Տեառն դարձցին
ի Բաբելոնէ այժմ ընդ հուպ. [4]զուր մար-
գարէանան ձեզ, եւ ես ոչ առաքեցի
17 զնոսա՝՝: Մի՛ լսէք նոցա, այլ ծառայե-
ցէք արքային Բաբելացւոց՝ եւ կեցջիք.
եւ ընդէ՞ր լինիցի քաղաքդ աւերակ:
18 Եթէ մարգարէք իցեն եւ իցէ բան Տեառն
առ նոսա, [5]եկեսցեն եւ յանդիման լի-
ցին իմ. զի այսպէս ասէ Տէր. Եւ
մնացեալ սպասն զոր ոչ ա՛ռ արքայն
Բաբելացւոց՝ յորժամ գերեաց զՅեքո-
նիա յԵրուսաղեմէ, ի Բաբելոն երթի-
ցէ, ասէ Տէր զօրութեանց: Այլ վասն
չերթալոյ սպասուցն մնացելոց ի տան
Տեառն եւ ի տան թագաւորին Յուդայ
19 յԵրուսաղեմէ ի Բաբելոն, Այսպէս՝՝ ասէ

[1]Յոմն. Ոչ լինիցիք ծառայք [2]Յոմն. գ-ի--ե
[3]Յոմն. խօսեցայ եւ ասեմ [4]Յոմն. զի զուր մարգարէանան ձեզ [5]Յոմն. աղաչեսցեն զՏէր զօրութեանց, զի մի՛ երթիցեն սպասք մնացեալք ի տան Տեառն, եւ ի տան թագաւորին Յուդայ, եւ յԵրուսաղէմ՝ ի Բաբելոն: (19) Զի այսպէս

Տէր զօրութեանց վասն սեանցն եւ վասն
ծովուն եւ վասն մեքենովթիցն եւ մնա-
ցորդաց սպասուցն՝ որ մնացին ի քա-
20 ղաքիդ յայդմիկ, Զոր ոչ ա՛ռ Նաբուքո-
դոնոսոր արքայ Բաբելացւոց ի գերելն
իւրում զՅեքոնիա որդի Յովակիմայ ար-
քայի Յուդայ յԵրուսաղեմէ ի Բաբե-
լոն, եւ զամենայն ազատսն Յուդայ
21 եւ զԵրուսաղեմի, Այսպէս ասէ Տէր
զօրութեանց Աստուած Իսրայէլի վասն
սպասուցն մնացելոց ի տան Տեառն, եւ
ի տան թագաւորին Յուդայ եւ յԵրու-
22 սաղէմ. Ի Բաբելոն երթիցեն, եւ անդ
եղիցին մինչեւ յօրն յորում այց արա-
րից նոցա, [2]այսպէս ասէ Տէր. Հանից
զնոսա եւ դարձուցից ի տեղիդ յայդ:

## ԳԼ. ԻԸ

1 Եւ եղեւ յամին յայնմիկ ի սկզբան թա-
գաւորութեանն Սեդեկեայ արքայի Յու-
դայ, յամին չորրորդի՝ յամսեանն հին-
գերորդի, ասէ ցիս Անանիա որդի Ա-
զովրայ [2]սուտ մարգարէ ի Գաբաւոնէ,
ի տան Տեառն առաջի քահանայիցն եւ
2 ամենայն ժողովրդեանն[6], Այսպէս ասէ
Տէր զօրութեանց Աստուած Իսրայէլի.
[7]Խորտակեցի լուծ՝՝ արքային Բաբելաց-
3 ւոց. [8]Յետ այլ եւս երկուց ամաց՝՝ ա-
ւուրց, եւ ես դարձուցից ի տեղիդ յայդ
զամենայն սպաս տանն Տեառն, զոր
միանգամ ա՛ռ Նաբուքոդոնոսոր արքայ
Բաբելացւոց ի տեղւոջէդ յայդմանէ, եւ
4 տարաւ ի Բաբելոն. Եւ զՅեքոնիա որ-
դի Յովակիմայ արքայի Յուդայ, եւ զա-
մենայն գերութիւն Հրէաստանի որք
մտին ի Բաբելոն, դարձուցից ես ի տե-
ղիս յայս, ասէ Տէր, [2]եւ զՅեքոնիա եւ
զգերութիւնն Յուդայ.՝՝ զի խորտակե-
ցից զլուծ արքային Բաբելացւոց:
5 Եւ ասէ Երեմիա մարգարէ ցԱնանիա
[2]սուտ մարգարէ՝ առաջի քահանայիցն
եւ առաջի ամենայն ժողովրդեանն որ
6 կային ի տան Տեառն, [9]Արդարեւ այդ-
պէս արասցէ Տէր, հաստատեսցէ զբան
քո զոր մարգարէացար, դարձուցանել
զսպաս [10]տանց այդորիկ՝՝ եւ զամենայն
7 գերին ի Բաբելոնէ ի տեղիս յայս: Բայց

[6]Յոմն-յետ այսր յաւելու, եւ ասէ [7]Յոմն. Խորտակեցի զլուծ [8]Յոմն. Մինչեւ յերկուս ամս
[9]Յոմն. Եւ ասէ Երեմիա մարգարէ, Ամէն. [10]Յոմն. տանն Տեառն

[1]լուարուք զպատգամս Տեառն" զոր ես
խօսիմ յականջս ձեր եւ յականջս ամե-
8 նայն ժողովրդեանդ ։ Մարգարէք որ ե-
ղեն յառաջ քան զիս եւ զքեզ՝ յաւի-
տենից, եւ մարգարէացան ի վերայ բա-
զում աշխարհաց եւ մեծամեծ թագա-
ւորութեանց, ի պատերազմ եւ ի չարիս
9 եւ ի մահ. Մարգարէ որ մարգարէա-
նայ խաղաղութիւն, եւ լիցի բան մար-
գարէին, ծանիցեն զմարգարէն զոր ա-
ռաքեաց նոցա Տէր հաւատարմութեամբ։
10 Եւ առ Անանիա մարգարէ առաջի ա-
մենայն ժողովրդեանն զանուրն ի պա-
րանոցէ Երեմեայ մարգարէի եւ խոր-
11 տակեաց ։ Եւ ասէ Անանիա առաջի ա-
մենայն ժողովրդեանն, Այսպէս ասէ Տէր.
Այդպէս խորտակեցից զլուծ Նաբուքո-
դոնոսորայ արքային Բաբելացւոց [2]յետ
երկուց ամաց" աւուրց ի պարանոցէ ա-
մենայն ազգաց ։ Եւ գնաց Երեմիա մար-
գարէ զճանապարհս իւր ։
12 Եւ եղեւ բան Տեառն առ Երեմիա
յետ խորտակելոյն Անանեայ մարգարէի
զանուրն ի պարանոցէ Երեմեայ մարգա-
13 րէի, եւ ասէ, Երթ խօսեաց ընդ Ա-
նանեայ եւ ասասցես, Այսպէս ասէ Տէր.
Անուրս փայտեղէնս խորտակեցեր, եւ
արարից ընդ այնր անուրս երկաթիս ։
14 Զի այսպէս ասէ Տէր զօրութեանց Ա-
տուած Իսրայէլի. Լուծ երկաթի եդի ի
վերայ պարանոցի ամենայն ազգաց ազ-
գացն՝ հարկել Նաբուքոդոնոսորայ ար-
քային Բաբելացւոց, եւ ծառայեսցեն
նմա. նաեւ զգազանս անապատի ե-
տու նմա ։
15 Եւ ասէ Երեմիա մարգարէ ցԱնանիա
մարգարէ, Արդ լուր, Անանիա, ոչ ա-
ռաքեաց զքեզ Տէր, եւ դու ի զուր յու-
սացուցեր զժողովուրդդ զայդ ի նան-
16 րութիւնս ։ Վասն այդորիկ այսպէս ա-
սէ Տէր. Ահա ես արձակեցից զքեզ յե-
րեսաց երկրիս, եւ ի սմին տարւոջ մեռա-
ջիր դու, զի խոտորումն խօսեցար ի
17 Տեառնէ ։ Եւ մեռաւ Անանիա մարգա-
րէ յամին յայնմիկ, յամսեանն եւթնե-
րորդի ։

## ԳԼ. ԻԹ

1 Եւ այս բանք են թղթոյն զոր առա-
քեաց Երեմիա մարգարէ յԵրուսաղեմէ
առ [3]ծերս գերութեանն եւ առ քա-
հանայս եւ առ [4]սուտ մարգարէսն,
Թուղթ ի Բաբելոն առ գերին" եւ
առ ամենայն ժողովուրդն զորս գերեաց
Նաբուքոդոնոսոր յԵրուսաղեմէ ի Բա-
2 բելոն, Յետ [5]ատնելոյ Յեքոնեայ ար-
քայի եւ տիկնոջն եւ ներքինեաց եւ
իշխանաց Յուդայ [6]յԵրուսաղեմէ, եւ ա-
մենայն ազատաց եւ արուեստագիտաց
եւ կալանաւորականաց" յԵրուսաղեմէ.
3 ի ձեռն Եղասեայ որդւոյ Սափանայ, եւ
Գամարեայ որդւոյ Քեղկեայ, զորս ա-
ռաքեաց Սեդեկիա արքայ առ Նաբու-
քոդոնոսոր արքայ Բաբելացւոց ի Բա-
բելոն, եւ ասէ,
4 Այսպէս ասէ Տէր զօրութեանց՝ Աս-
տուած Իսրայէլի վասն գերութեանդ որ
գերեցաւ յԵրուսաղեմէ ի Բաբելոն.
5 Տունս շինեցէք եւ բնակեցէք, դրախտ
տնկեցէք եւ կերայք զպտուղս նոցա,
6 Առէք կանայս եւ ծնիցին ուստերք եւ
դստերք, եւ առէք կանայս ուստերաց
ձերոց եւ զդստերս ձեր տուք արանց,
եւ ծնցին ուստերս եւ դստերս, եւ բազ-
7 մասջիք այդր եւ մի նուազեսջիք ։ Եւ
[7]կեցջիք խաղաղութեամբ յերկրին" յոր
գերեցի զձեզ այդր, եւ աղօթս արա-
րէք [8]ի վերայ դոցա" առ Տէր. զի ի դո-
րա խաղաղութեանն եղիցի եւ ձեզ խա-
8 ղաղութիւն ։ Զի այսպէս ասէ Տէր զօ-
րութեանց՝ Աստուած Իսրայէլի. Մի
հրապուրեսցեն զձեզ [9]սուտ մարգարէքդ
ձեր որ ի միջի ձերում են, եւ ըղձապա-
տումքդ ձեր. եւ մի անսայք երազոց
9 ձերոց զոր դուք [10]տեսանէք. Զի սուտ
մարգարէանան դոքա ձեզ յանուն իմ,
10 եւ ես ոչ առաքեցի, ասէ Տէր ։ Զի այս-
պէս ասէ Տէր. Յորժամ մերձ լիցէ Բա-
բելոնի լնուլ եւթանասուն ամ, այց ա-
րարից ձեզ. եւ հաստատեցից ի վերայ
ձեր զբանս իմ զբարիս, դարձուցանել
11 զձեզ ի տեղիս յայս ։ Զի ես գիտեմ զխոր-
հուրդս զոր խորհիմ [9]եւ խորհեցայց" ի
վերայ ձեր, ասէ Տէր, խորհուրդ խա-
ղաղութեան եւ ոչ չարութեան, տալ
12 ձեզ [11]յետ այդորիկ" յոյս. Եւ կարդա-
ջիք առ իս, եւ երթիջիք եւ յաղօթս

[1] Ներ. լուր զպատգամս զայս [2] Ներ. մինչեւ յերկուս ամս

[3] Ներ. մնացորդս ծերոց [4] Ներ. մարգարէսն [5] Ներ. ելանելոյ [6] Ներ. եւ Երուսաղեմի եւ հիւսանց եւ դարբնաց [7] Ներ. խնդրեցէք զխաղաղութիւն քաղաքին [8] Ներ. վասն նորա [9] Յ Ներ. դ—կ—ե [10] Ներ. տայք տեսանել [11] Ներ. կատարած եւ

13 կացջի՛ք առ իս, եւ ես լուայց ձեզ։ Եւ
խնդրեսջի՛ք զիս եւ գտջի՛ք. զի խնդրի-
14 ջէք զիս յամենայն սրտէ ձերմէ. Եւ
[1]երեւեցայց ձեզ, ասէ Տէր, եւ դար-
ձուցից զգերութիւն ձեր, եւ ժողովե-
ցից զձեզ յամենայն ազգաց եւ յամե-
նայն տեղեաց ուր ցրուեցի զձեզ անդր,
ասէ Տէր. եւ դարձուցից զձեզ ի տե-
15 ղւոջ ուստի գերեցի զձեզ այտի. Զի ա-
սացէք՝ թէ Կացոյց Տէր ի մեզ մարգա-
րէս ի Բաբելոն։
16 Զի այսպէս ասէ Տէր ցԹագաւորդ որ
նստի յաթոռ Դաւթի, եւ ցամենայն
ժողովուրդ որ բնակեալ է ի քաղաքիդ
յայդմիկ, եղբարք ձեր որ ոչ ելին ընդ ձեզ
17 ի գերութիւն, Այսպէս ասէ Տէր զօրու-
թեանց. Ահաւասիկ ես առաքեմ ի նո-
սա սով եւ սուր եւ մահ, եւ արարից
զդոսա իբրեւ զթուզ ժանտ [2]սուարիմ
որ ոչ ուտիցի ի ժանտութենէ իւրմէ։
18 Եւ հալածեցից զնոսա սրով եւ սովով
եւ մահուամբ, եւ տաց զնոսա [3]ի չար-
ժումն ամենայն թագաւորութեանց երկ-
րի, ի նզովս եւ [4]յապականութիւն եւ
ի չչիւն եւ ի նախատինս ի մէջ ամենայն
19 ազգաց ուր ցրուեցից զնոսա անդր. Փո-
խանակ զի ոչ լուան բանից իմոց, ա-
սէ Տէր. զի առաքեցի առ նոսա զծա-
ռայս իմ զմարգարէս կանխեալս եւ ա-
ռաքեալ, եւ ոչ լուայք, ասէ Տէր։
20 Եւ դուք լուարուք զբան Տեառն, ա-
մենայն գերիդ, զոր առաքեցի յԵրուսա-
21 ղեմէ ի Բաբելոն։ Այսպէս ասէ Տէր
զօրութեանց՝ Աստուած Իսրայէլի, ի վե-
րայ Աքիաբայ որդւոյ Կուղեայ, եւ ի
վերայ Սեդեկեայ որդւոյ Մաասայ՝ որ
մարգարէացան ձեզ յանուն իմ զուր.
Ահաւասիկ ես տաց զնոսա ի ձեռս Նա-
բուքոդոնոսորայ արքային Բաբելացւոց,
եւ սատակեսցէ զնոսա առաջի աչաց
22 ձերոց։ Եւ առցեն ի նոյանէն անէծս ի
մէջ ամենայն գերութեանն Յուդայ որ
է ի Բաբելոն, եւ ասասցեն, Արասցէ
զքեզ Տէր՝ որպէս արար Սեդեկեայ եւ
Աքիաբայ, զորս տապակեաց արքայն
23 Բաբելացւոց ի հուր։ Վասն զի գործե-
ցին զանօրէնութիւնս յԻսրայէլի, եւ
շնային ընդ կանայս քաղաքայնոց իւ-
րեանց. եւ խօսէին պատգամս յանուն
իմ սուտ, զոր ոչ հրամայեցի նոցա. եւ
ես ինձէն իրազէտ եւ վկայ եմ, ասէ
Տէր։
24 Եւ ցՍամեա Նեղիմացի ասասցես,
25 Այսպէս ասէ Տէր զօրութեանց՝ Աստուած
Իսրայէլի. Փոխանակ զի առաքեցեր դու
յանուն [5]իմ թուղթս առ ամենայն ժո-
ղովուրդն յԵրուսաղէմ, [6]եւ ես ոչ առա-
քեցի զքեզ յանուն իմ,[6] եւ առ Սոփո-
նիա որդի Մաասայ քահանայ եւ առ ա-
26 մենայն քահանայսն ասել, թէ Տէր ետ
զքեզ քահանայ փոխանակ Յովիդայեայ
քահանայի, լինել վերակացու ի տան
Տեառն ամենայն մարդոյ [7]որ մարգա-
րէանայ, եւ ի վերայ ամենայնի որ պատա-
մէ ըղձութիւն. եւ տացես զնոսա յար-
27 գելան ի վերնագրանն. Եւ արդ ընդէ՞ր
ոչ արարեր պատուհաս Երեմիայի Անա-
28 թովթացւոյ՝ որ մարգարէանայ ձեզ. Զի
առաքեաց առ մեզ ի Բաբելոն եւ ա-
սէ, թէ Հեռի է ժամանակն. շինեցէք
տունս եւ բնակեցէք, տնկեցէք դրախտս
29 եւ կերայք զպտուղս նոցա։ Եւ ընթեր-
ցաւ Սոփոնիա քահանայ զթուղթն յա-
30 կանջս Երեմիայի մարգարէի։ Եւ եղեւ
31 բան Տեառն առ Երեմիա, եւ ասէ, Ա-
ռաքեա առ ամենայն գերին եւ ասա-
ցես, Այսպէս ասէ Տէր ի վերայ Սա-
մեայ Նեղիմացւոյ. Փոխանակ զի մար-
գարէացաւ ձեզ Սամեա, եւ ես ոչ ա-
ռաքեցի զնա, եւ յուսացոյց զձեզ ի
32 նանրութիւն, Վասն այսորիկ այսպէս
ասէ Տէր. Ահաւասիկ ես արարից հան-
դէս ի վերայ Սամեայ Նեղիմացւոյ եւ ի
վերայ ազգի դորա. եւ ոչ եղիցի դորա
մարդ ոք՝ որ նստիցի ի մէջ [8]ձերում
տեսանել զբարութիւն զոր ես արարից
[9]ձեզ, ասէ Տէր. զի խոտորումն խօսե-
ցաւ ի Տեառնէ։

## ԳԼ. Լ

1 Բանն որ եղեւ առ Երեմիա ի Տեառնէ՝
2 ասել, Այսպէս ասէ Տէր Աստուած Իս-
րայէլի. Գրեա դու քեզ զամենայն զբանս
3 զոր ետու քեզ հրաման՝ ի մատենի։ Զի
ահա աւուրք գան, ասէ Տէր, եւ դար-
ձուցից զգերութիւն ժողովրդեան իմոյ

---

[1] Եբր. գտայց [2] Սուարիմ, բառ Եբրայեցերէն, նոյն ընդ ժանտի [3] Կամ, յարհաւիրս [4] Եբր. յապշութիւն

[5] Եբր. քո [6-6] Եբր. պակասէ [7] Եբր. մոլեգնելոյ, որ կերպարանի ի մարգարէ, եւ տացես զնոսա ի կոճեղս եւ յանուր [8] Եբր. ժողովրդեանս այսորիկ [9] Եբր. ժողովրդեան իմում

Իսրայէլի եւ զՅուդայ, ասէ Տէր. եւ
դարձուցից զդոսա յերկիրդ զոր ետու
հարցն նոցա, եւ տիրեսցեն զնա։
4 Եւ այս բանք են զոր խօսեցաւ Տէր
5 ի վերայ Իսրայէլի եւ Յուդայ. Այսպէս
ասէ Տէր. ձայն ահի [1]լուիջիք, եւ զձայն
ահեղ զաւժի, յորմէ դողայցեն մէջք. եւ
փրկութիւն եւ խաղաղութիւն ոչ լիցէ"։
6 Հարցէք եւ տեսէք, եթէ ծնանի՞ երբեք
արու. զի տեսի զամենայն այր եւ ձեռք
իւր ի վերայ միջոյ իւրոյ իբրեւ ծննդա-
կանի, եւ դարձան երեսք ամենայն ի
7 դոյն դալկանի։ Վա՜յ, զի մեծ է օրն այն,
եւ չիք այնպիսի. եւ անձնարին նեղու-
թեամբ է ժամանակն Յակոբայ, եւ
8 ապրեսցի ի նմանէ։ Եւ եղիցի յաւուր
յայնմիկ, ասէ Տէր զօրութեանց, խոր-
տակեցից [2]զլուծն ի պարանոցէ նոցա,
եւ զկապանս նոցա խզեցից, եւ ոչ եւս
9 կայցեն նոքա ի հարկի օտարաց". Այլ
հարկեսցին Տեառն Աստուծոյ իւրեանց.
եւ [3]զԴաւիթ արքայ իւրեանց" յարու-
10 ցից նոցա։ Բայց դու մի՛ երկնչիր, ծա-
ռայ իմ Յակոբ, ասէ Տէր, եւ մի՛ զար-
հուրեսջիր, Իսրայէլ. զի ահաւասիկ ես
փրկեցից զքեզ ի հեռաստանէ, եւ զզա-
ւակ քո յերկրէ գերութեան նոցա. եւ
դարձցի Յակոբ եւ դադարեսցէ, եւ
բարեկեցիկ լիցի, եւ ոչ ոք իցէ որ զար-
11 հուրեցուսցէ. Զի ընդ քեզ եմ ես, ա-
սէ Տէր, ի փրկել զքեզ. զի արարից
նուաղութիւն ի մէջ ազգաց՝ յորս ցրուե-
ցի զքեզ անդր, եւ քեզ ոչ արարից
վախճան. եւ խրատեցից զքեզ իրա-
ւամբք, եւ քաւելով ոչ քաւեցից զքեզ։
12 Այսպէս ասէ Տէր. [4]Սատակայուցի զբե-
կումն" քո, եւ ցաւագին են հարուածք
13 քո։ Ոչ ոք է որ դատի զդատաստանս
[5]քո. ի ցաւս քո բժշկեցար, եւ օգուտ
14 ոչ եղեւ" քեզ։ Ամենայն բարեկամք քո
մոռացան զքեզ, եւ ոչ հարցանիցեն
զքէն. զի զհարուածս թշնամւոյ հարի
զքեզ՝ խրատ սաստիկ. վասն [6]ամենայն
անիրաւութեանց քոց, բազմացան մեղք
15 քո։ Զի՞ գոչես ի վերայ բեկման քո.
[7]անկայն ոչ արարից քեզ վախճան."
բուռն են ցաւք քո. վասն բազմութեան
անօրէնութեան քո, սաստկացան մեղք
16 քո, արարի քեզ զայդ։ Վասն այդորիկ
ամենեքին որ ուտէին զքեզ՝ կերիցին.
եւ ամենայն թշնամիք քո [8]կերիցեն
զմարմինս իւրեանց. վասն բազում ա-
նիրաւութեանց քոց որ յաճախեցին. եւ
մեղք քո արարին քեզ զայդ եւ եղի-
ցին աւարառուք քո յապականութիւն,
եւ զամենայն աւարառուս քո տաց յա-
17 ւար։ Զի ածից զբժշկութիւն քո" ի ցա-
ւագին վիրաց քոց, եւ բժշկեցից զքեզ,
ասէ Տէր. զի [9]Ցրուեալ կոչեցար, Սիոն,
եւ զայն է որս ձեր. զի որ խնդրիցէ ոչ
գտանիցէ զնա"։
18 Այսպէս ասէ Տէր. Ահաւասիկ ես
դարձուցից զվտարանդութիւն յարկացն
Յակոբայ, եւ [10]գերութեանն նորա ո-
ղորմեցայց. եւ շինեսցի քաղաքն [11]ի
բարձրութեան իւրում", եւ տաճարն
19 ըստ իրաւանց իւրոց կանգնեսցի։ Եւ ել-
ցեն ի դոցանէ երգիչք եւ ձայն խաղալ-
կաց, եւ բազմացուցից զդոսա, եւ մի՛
նուազեսցին. [12]տարածեցից զդոսա, եւ
20 մի՛ [13]նուաղեսցին։ Եւ մտանիցեն դոքա
իբրեւ զառաջինն, եւ վկայութիւնք դո-
ցա կանգուն կայցեն առաջի աչաց ի-
մոց". եւ հանդէպ արարից ի վերայ նեղ-
21 չաց դոցա. Եւ [14]եղիցին բռնաւորք
քան զնոսա ի վերայ նոցա, եւ իշխան
դոցա ի դոցանէ ելցէ. եւ ժողովեցից
զդոսա, եւ դարձցին" առ իս. զի ո՞վ է
այն որ ետ զսիրտ իւր դառնալ առ [15]Տէր,
22 ասէ Տէր։ Եւ եղիջիք ինձ ի ժողովուրդ,
եւ ես եղէց ձեզ յԱստուած։
23 [16]Զի բարկութիւն Տեառն ել ցասմամբ,
[17]ել բարկութիւն մրրկեալ. ի վերայ
24 ամպարշտաց եկեսցէ"։ Եւ մի՛ դարձցի

[1] Եբր. լուաք, երկեւղ է եւ ոչ խաղաղութիւն [2] Եբր. զլուծ նորա ի պարանոցէ քումմէ, և զկապանս քո խզեցից, և ոչ եւս ծառայեցուսցեն զնա օտարք [3] Եբր. Դաւիթ արքայի իւրեանց զոր [4] Եբր. Անցոյց է բեկումն [5] Եբր. քո ի պատել. եւ դարման բժշկութեան չիք [6] Եբր. յաճախութեան

[7] Եբր. դաժան [8] Եբր. ամենեքին նոքա երթիցեն ի գերութիւն. եւ եղիցին որ յափշտակեննն զքեզ ի յափշտակութիւն, եւ զամենեսին որ կողոպտեն զքեզ՝ տաց ի կողոպուտ։ (17) Զի ածից քեզ բժշկութիւն [9] Եբր. Վտարանդի կոչեցին զքեզ, Այս այն Սիոն է, ասեն, չիք որ խնդրէ զնա [10] Եբր. բնակութեանց [11] Եբր. ի վերայ աւերակաց իւրոց [12] Եբր. մեծարեցից [13] Եբր. անարգեսցին։ (20) Եւ եղիցին որդիք նոցա իբրեւ զառաջինն, եւ ժողով նոցա առաջի իմ հաստատեսցի [14] Եբր. եղիցի գլխաւոր նոցա ի նմանէ, եւ իշխան նոցա ի միջոյ նորա ելցէ, եւ մերձեցուցից զնա, եւ մատիցէ [15] Եբր. իս [16] Եբր. Ահա [17] Եբր. բարկութիւն որ գերփէ. ի վերայ գլխոյ ամբարշտաց արձակեսցի

բարկութիւն սրտմտութեան Տեառն, մինչեւ արասցէ եւ կատարեսցէ զյօժարութիւն սրտի իւրոյ, ի վախճանի աւուրց ծանիջիք զայն։

## ԳԼ. ԼԱ

1 Ի ժամանակի յայնմիկ ասէ Տէր, եւ ե-
ղէց յԱստուած ազգի Իսրայէլի, եւ
2 նոքա եղիցին ինձ ի ժողովուրդ։ Այ-
սպէս ասէ Տէր. [1]Գտին տապ յանապա-
տի անդ, սատակելովքն հանդերձ սու-
սերաւ. երթայք, մի՛ սատակէք զԻս-
3 րայէլ". Բայց ի բաց Տէր երեւեցաւ [2]նմա.
սէր յաւիտենական սիրեցի զքեզ, վասն
այնորիկ ձգեցի զքեզ ի գթութիւն։
4 Դարձեալ շինեցից զքեզ եւ շինեսջիր,
կոյս Իսրայէլի. դարձեալ առցես զթմբուկ
քո, եւ ելցես ընդ ժողովս խաղալկաց։
5 Դարձեալ տնկեսջիր այգիս ի լերին Սա-
մարիայ, [3]տնկեսջիք տունկս, եւ օրհ-
6 նեսջիք"։ Զի հասեալ է օր կոչման հրա-
ւիրակի ի լերինս Եփրեմի. Արիք եւ ել-
ցուք ի Սիոն առ Տէր Աստուած մեր։
7 Այսպէս ասէ Տէր. [4]Ցնծութիւն առնել
Յակոբայ, ուրախ լերուք եւ զոչեցէք
ի վերայ գլխոյ" ազգաց. լսելի արա-
րէք, օրհնեցէք եւ ասացէք. [5]Փրկեաց
Տէր զժողովուրդ իւր", զմնացորդս Իս-
8 րայէլի։ Ահաւասիկ ես ածից զնոսա յերկ-
րէ հիւսիսոյ, եւ ժողովեցից զնոսա ի
ծագաց երկրէ [6]ի տօնն պասեք. եւ ծնցին
որդիս ի բազմութիւն յոյժ". ի մէջ նո-
ցա կոյրն, կաղն, յղին եւ ծնեալն, միա-
համուռ ժողովուրդ մեծ, դարձցին այսր։
9 Լալով [7]ելին, եւ մխիթարութեամբ ա-
ծից զնոսա՝ հանգուցանել ի վերայ ջուրց
վտակաց ընդ ճանապարհ ուղիղ, եւ
մի՛ մոլորեսցին ի նմա. զի եղէ Իսրա-
յէլի ի հայր, եւ Եփրեմ անդրանիկ իմ է։
10 Լուարուք զպատգամ Տեառն, ազգք,
եւ պատմեցէք ի կղզիս հեռաւորս, եւ
ասացէք. Որ հոսեաց զԻսրայէլ՝ ժողո-
վեսցէ զնա. եւ պահեսցէ զնա իբրեւ
11 տաւարածական զհօտ իւր. Զի փրկեաց
Տէր զՅակոբ, եւ ապրեցոյց զնա ի ձեռաց
12 բռնաւորաց նորա։ Եկեսցեն եւ ուրախ
լիցին եւ ցնծասցեն ի լերին Սիոնի. ե-
կեսցեն ի բարութիւնս Տեառն՝ յերկիր
ցորենոյ եւ գինւոյ եւ [8]արդեանց եւ խա-
շանց, արջառոյ եւ ոչխարի. եւ եղի-
ցին անձինք նոցա իբրեւ [9]ծառ պտղա-
13 լից", եւ ոչ եւս քաղցիցեն։ Յայնժամ
ցնծասցեն կոյսք ի ժողովս [10]երիտասար-
դաց, եւ ծերք խնդասցեն". եւ դար-
ձուցից զսուգ նոցա ի խնդութիւն, եւ
[11]ուրախ արարից զնոսա ի տրտմութենէ
14 իւրեանց։ Զմոլեցուցից եւ արբեցու-
ցից զանձինս քահանայից որդւոցն Ղե-
ւեայ", եւ ժողովուրդ իմ լցցի բարւօք
բարութեամբք, ասէ Տէր։
15 Այսպէս ասէ Տէր. Ձայն ի Հռամայ
լսելի եղեւ՝ ողբումն եւ լալումն եւ զու-
ժումն. Ռաքէլ լայր զորդիս իւր, եւ ոչ
կամէր մխիթարել ի վերայ որդւոց իւ-
16 րոց, զի ոչ գոյին։ Այսպէս ասէ Տէր.
Դադարեսցէ անձն քո ի լալոյ, եւ աչք
քո յարտասուաց. զի գոն վարձք գոր-
ծոց քոց, ասէ Տէր, եւ դարձցին յերկ-
17 րէ թշնամեաց. Եւ եղիցի յոյս վախճա-
նի քո, ասէ Տէր, [12]բնակաւոր որդւոց
18 քոց" ի սահմանս նոցա։ Լսելով լուայ
զողբումն Եփրեմի. Խրատեցեր զիս, Տէր,
եւ խրատեցայ [6]եւ ոչ ուսայ" իբրեւ զըն-
ջուղ տրմուղ. դարձո զիս եւ դարձայց,
19 զի դու ես Տէր Աստուած իմ։ [13]Եւ յետ
գերութեան" իմոյ ապաշաւեցի, եւ յետ
իմանալոյն իմոյ յոգւոց հանէի [14]ի վերայ
աւուր ամօթոյն իմոյ. եւ ցուցի քեզ թէ
առի նախատինս" ի մանկութենէ իմմէ։
20 [15]Եւ թէ" որդի սիրելի՞ իցէ իմ Եփրեմ,
մանո՞ւկ զբօսանաց, փոխանակ զի բանք
իմ են ի նմա, յիշելով յիշեցից զնա միւ-
սանգամ. վասն այնորիկ [16]փութացայ
յաղագս նորա", ողորմելով ողորմեցայց
նմա, ասէ Տէր։
21 [17]Մատիր անձամբ անձին արա դու քեզ,
Սիոն, պատուհաս. ընկեա զսիրտ քո ի
թիկունս, զնա զճանապարհ". դարձիր,

---

[1] Եբր. Եգիտ շնորհս յանապատի անդ ժողովուրդն ապրեալ ի սրոյ. յորժամ երթայր հանգչել Իսրայէլ [2] Եբր. ինձ [3] Եբր. տնկեսցեն տունկս եւ օրհնեսցեն (վայելեսցեն) [4] Եբր. Երգեցէք ի Յակոբ ուրախութեամբ, ուրախ լերուք ի վերայ գլխոյ [5] Եբր. փրկեա, Տէր, զժողովուրդ քո [6] ՅԵբր. պակասէ [7] Եբր. գայցեն

[8] Եբր. ձիթոյ [9] Եբր. զդրախտ ջրարբի [10] Եբր. եւ երիտասարդք եւ ծերք միանգամայն [11] Եբր. մխիթարեցից զնոսա ի տրտմութենէ իւրեանց. (14) Եւ զմոլեցուցից զանձինս քահանայից պարարտութեամբ [12] Եբր. եւ դարձցին որդիք քո [13] Եբր. Արդարեւ յետ դառնալոյ [14] Եբր. յամօթ եղէ եւ պատկառեցայ, զի տարայ նախատանաց [15] Եբր. Միթէ [16] Եբր. գալարին աղիք իմ [17] Եբր. Կանգնեա քեզ կոթողս, արա քեզ սիւնս բարձունս, դիր զսիրտ քո յարահետ անդր, ճանապարհ զոր գնացեր

կոյսդ Իսրայէլի, դարձիր անդրէն ի քա-
22 ղաքս քո [1]սգացեալ։ Մինչեւ յե՞րբ թա-
փառիցիս, դուստր [2]անարգեալ. զի հաս-
տատեաց Տէր [3]զփրկութիւն ի ձեռա-
տունկն նոր. փրկութեամբ շրջեսցին
23 մարդիկ՚՚։ Այսպէս ասէ Տէր զօրութեանց՝
Աստուած Իսրայէլի. դարձեալ ասաս-
ցեն զբանս զայս յերկրին Յուդայ եւ ի
քաղաքսն նորա, յորժամ դարձուցից զգե-
րութիւնս նոցա, [4]օրհնեալ է Տէր յար-
24 դար եւ ի սուրբ լերին իւրում։ Եւ բնա-
կիչքն Հրէաստանի ամենայն քաղաքօքն
իւրեանց եւ գործաւորօքն՝ յղփասցին
25 հօտիւքն։՚՚ Զի արբուցի զամենայն անձն
ծարաւի, եւ զամենայն անձն քաղցեալ
26 լցուցի. Վասն այնորիկ զարթեայ եւ
տեսի, եւ քուն իմ քաղցրացաւ ինձ։
27 Ահա աւուրք գան, ասէ Տէր, եւ սեր-
մանեցից զտունն Իսրայէլի, եւ զտունն
Յուդայ ի զաւակ մարդկան եւ ի զա-
28 ւակ անասնոյ։ Եւ եղիցի զոր օրինակ
զարթուցեալ էի ի վերայ նոցա ի խլել
եւ ի կործանել, ի քակել եւ ի կորու-
սանել եւ ի չարչարել, նոյնպէս զար-
թեայց ի վերայ նոցա ի շինել եւ ի տնկել,
29 ասէ Տէր։ Յաւուրսն յայնոսիկ մի՛ եւս
ասիցեն թէ Հարքն աղօխ կերան, եւ
30 որդւոց ատամունք առան. Այլ իւրա-
քանչիւր ի մեղս իւր մեռցի. ամենայն
մարդ որ ուտիցէ զաղօխն՝ նորին ա-
տամունքն առցին։
31 Ահաւասիկ աւուրք գան, ասէ Տէր,
եւ ուխտեցից տանդ Իսրայէլի եւ տանդ
32 Յուդայ ուխտ նոր, Ոչ ըստ ուխտին զոր
ուխտեցի ընդ հարս նոցա՝ յաւուր յո-
րում առի զձեռանէ նոցա հանել զնոսա
յերկրէն Եգիպտացւոց. զի նոքա ոչ կա-
ցին յուխտին իմում, եւ ես անփոյթ ա-
33 րարի զնոցանէ, ասէ Տէր. Այլ այս է
ուխտն զոր ուխտեցից տանդ Իսրայէլի
յետ աւուրցն այնոցիկ, ասէ Տէր. Տաց
զօրէնս իմ ի միտս նոցա, եւ ի սիրտս նո-
ցա գրեցից զնոսա. եւ եղէց նոցա յԱս-
տուած, եւ նոքա եղիցին ինձ ի ժողո-
34 վուրդ։ Եւ մի՛ եւս ուսուցանիցեն իւ-
րաքանչիւր զընկեր իւր, եւ իւրաքան-
չիւր զեղբայր իւր ասել թէ Ծանիր զՏէր.
զի ամենեքին ծանիցեն զիս ի փոքր-
կանց նոցա մինչեւ ի մեծամեծս, ասէ
Տէր. զի քաւիչ եղէց անիրաւութեանց
նոցա, եւ զմեղս նոցա ոչ եւս յիշեցից։
35 Այսպէս ասէ Տէր, որ ետ զարեգակն ի
լոյս տուընջեան, [5]հաստատութեամբ,
զլուսին եւ զաստեղս ի լոյս գիշերոյ,
եւ աղաղակ ի ծովու, եւ գոչեն ալիք
նորա՚՚, Տէր ամենակալ անուն է նորա.
36 Եթէ դադարեսցեն օրէնքս այս յերեսաց
իմոց, ասէ Տէր, ապա եւ ազգն Իսրա-
յէլի դադարեսցէ ի լինելոյ յազգ առաջի
37 աչաց իմոց զամենայն աւուրս։ Այսպէս
ասէ Տէր. Եթէ [6]վերասցին երկինք ի
բարձունս, ու եթէ [7]խոնարհեսցին յա-
տակք երկրի ի խոնարհ, ես [8]ոչ խոտե-
ցից զամենայն ազգ Իսրայէլի, ասէ
Տէր, վասն ամենայնի զոր արարին։
38 Ահա աւուրք գան, ասէ Տէր, եւ շի-
նեսցի [9]քաղաք Տեառն յաշտարակէ ան-
ոի Անամայելի մինչեւ ի դուռն Ան-
39 կեանն։ Եւ ելցէ տակաւին [10]կասկած,
եւ չափ նորա յանդիման նորա մինչեւ
զբլուրն Գարեբայ. եւ բոլորեսցի շուր-
40 ջանակի [11]յընտիր ընտիր վիմաց՚՚։ Եւ ա-
մենայն ձորն [12]Փաքադիմայ եւ մոխրոցն,
եւ ամենայն [13]Սարեմովթն, մինչեւ ի
ձորն Կեդրոնի, մինչեւ ցանկիւն դրան
Ասպաստանացն արեւելից, սրբութիւն
Տեառն. եւ մի՛ եւս խլեսցին, եւ մի՛
եւս քակեսցին մինչեւ յաւիտեան։

## Գլ. ԼԲ

1 Բանն որ եղեւ ի Տեառնէ առ Երեմիա,
յամին տասներորդի Սեդեկեայ արքայի
Յուդայ. այն ամ ութուտասներորդ էր
Նաբուքոդոնոսորայ [8]արքայի Բաբելաց-
2 ւոց՚՚։ Եւ յայնժամ զօր արքային Բա-
բելացւոց պաշարեաց զԵրուսաղէմ. եւ
Երեմիա մարգարէ կայր ի կալանս [14]ի
սրահի բանտին՝ որ էր յապարանս թա-
3 գաւորին Յուդայ, Յոր արգել զնա ար-
քայ Սեդեկիա, եւ ասէ, Ընդէ՞ր դու
մարգարէանաս եւ ասես. Այսպէս ասէ
Տէր. Ահաւադիկ ես տամ զքաղաքդ

[1] Եբր. յայսոսիկ [2] Եբր. խոտորեալ [3] Եբր. նոր ինչ յերկրի. կին մարդ շուրջ եկեսցէ զա-րամբ [4] Եբր. Օրհնեսցէ զքեզ Տէր, բնակութիւն արդարութեան, լեառն սրբութեան։ (24) Եւ բնակեսցեն ի նմա Յուդա եւ ամենայն քաղաքք նորա ի միասին, հողագործք եւ որ շրջին հօտիւք։

[5] Եբր. զհաստատութիւն լուսնի եւ աստեղաց ի լոյս գիշերոյ, որ սաստէ ծովու յորժամ գոչեն ալիք նորա, կամ, խռովեմ զծով եւ գոչեցուցանեմ զալիս նորա [6] Եբր. չափեսցին [7] Եբր. զննեսցին [8] Յեբր. պակաս [9] Եբր. քաղաքն վասն [10] Եբր. ծիր չափոյ [11] Եբր. մինչեւ ի Գոաթ [12] Եբր. դիականց [13] Եբր. արտորայն [14] Եբր. ի գաւթի

զայդ ի՛ձեռս թագաւորին Բաբելացւոց,
4 եւ առցէ զդա. Եւ Սեդեկիա արքայ
Յուդայ մի՛ ապրեսցի ի ձեռաց Քաղ-
դէացւոցն. զի մատնելով մատնեսցի ի
ձեռս թագաւորին Բաբելացւոց, եւ խօ-
սեսցի բերան ի բերան ընդ նմա, եւ աչք
5 զորա զաչս նորա տեսցեն. Եւ ի Բա-
բելոն մացէ Սեդեկիա, եւ անդ նստցի
մինչեւ այց արարից զմա, ասէ Տէր.
զի՞ մարտնչիք ընդ Քաղդէացիսն ուստի
ոչինչ յաջողիցիք։
6 [1]Եւ եղեւ բան Տեառն առ Երեմիա՝՝
7 եւ ասէ, Ահաւասիկ Անամայէլ որդի
Սեղովմայ հօրեղբօր քո գայ առ քեզ
եւ ասէ, Ստացիր դու քեզ զագարակն
իմ, որ է յԱնաթովթ, զի քեզ իսկ է
անկ ըստ մերձաւորութեան առնուլ ի
8 ստացուած։ Եւ եկն առ իս Անամայէլ
որդի Սեղովմայ հօրեղբօր իմոյ՝ ըստ բա-
նի Տեառն [2]ի սրահ բանտին եւ ասէ ցիս,
Ստացիր զագարակն իմ որ է յԱնաթովթ
յերկրին Բենիամինի, զի քեզ պարտ է
ստանալ զժառանգութիւնն, եւ դու
իսկ [3]երիցագոյն ես՝՝. եւ գիտացի՛ թէ
9 բան Տեառն է։ Եւ ստացայ զագարակն
յԱնամայելայ որդւոյ հօրեղբօր իմոյ, որ
է յԱնաթովթ. եւ կշռեցի նմա արծաթ
10 եւթն սիկղ եւ տասն արծաթոյ. Եւ
գրեցի մուրհակս եւ կնքեցի, եւ կա-
ցուցի վկայս, եւ կշռեցի զարծաթն ի
11 կշիռս։ Եւ առի զմուրհակ ստացուա-
ծոյն զկնքեալն՝ ըստ հրամանի եւ ըստ
12 իրաւանց, եւ զարձակն. Եւ ետու զմուր-
հակ ստացուածոյն ցԲարուք որդի Ներ-
եայ որդւոյ Մաասայ առաջի Անամայե-
լի որդւոյ հօրեղբօր իմոյ, եւ առաջի
[4]այնոցիկ որ կային անդ. եւ գրեցին՝՝
ի մուրհակի ստացուածոյն, առաջի ա-
մենայն Հրէից, որ նստէին [2]ի սրահի բան-
13 տին։ Եւ պատուիրեցի Բարուքայ ա-
14 ռաջի նոցա եւ ասեմ, Այսպէս ասէ Տէր
ամենակալ Աստուած Իսրայելի. Առ
զմուրհակդ զայդ՝ զմուրհակ ստացուա-
ծոց զկնքեալն, եւ զմուրհակն արձակ,
եւ դիցես ի խեցեղէն աման, զի կաց-
15 ցէ աւուրս բազումս։ Զի այսպէս ասէ
Տէր ամենակալ Աստուած Իսրայելի.
Դարձեալ ստասցին տունս եւ ագարակս
եւ այգիս յերկրիդ յայդմիկ։

16 Եւ կացի յաղօթս առ Տէր, յետ տա-
լոյն զմուրհակ ստացուածոյն ցԲարուք
17 որդի Ներեայ, եւ ասեմ, Որ եսդ Տէր
Տէր, դու արարեր զերկինս եւ զերկիր
զօրութեամբ քո մեծաւ եւ բազկաւ քով
բարձու. զի ոչինչ է բան որ [5]ծածկիցի
18 ի քէն. Առնես ողորմութիւն ի հազար
դարս, եւ հատուցանես զմեղս հարց ի
ծոց որդւոց իւրեանց յետ նոցա. Աս-
տուած մեծ եւ հզօր, Տէր զօրութեանց
19 անուն նորա. Մեծդ խորհրդովք եւ զօ-
րաւոր գործովք, [6]Ամենակալ մեծանունդ
Տէր.՝՝ աչք քո բաց են յամենայն ճա-
նապարհս որդւոց մարդկան, տալ իւ-
րաքանչիւր ըստ ճանապարհի իւրում
20 եւ ըստ պտղոյ գնացից իւրեանց։ Որ
արարեր նշանս եւ արուեստս յերկրին Ե-
գիպտացւոց մինչեւ ցայսօր, ի մէջ Իս-
րայէլի, եւ [7]ի մէջ ծննդոց երկրի՝՝, եւ
արարեր քեզ անուն իբրեւ յաւուր յայս-
21 միկ. Եւ հաներ զժողովուրդ քո զԻս-
րայէլ յերկրէն Եգիպտացւոց նշանօք եւ
արուեստիւք, հզօր ձեռամբ եւ բարձր
22 բազկաւ, եւ մեծամեծ տեսլեամբք։ Եւ
ետուր նոցա զերկիրս զայս զոր երդուար
հարցն նոցա՝ տալ նոցա զերկիր որ բղխէ
23 զկաթն եւ զմեղր. Եւ մտին եւ ժա-
ռանգեցին զնա. եւ ոչ լուան ձայնի
քում, եւ ըստ հրամանաց քոց ոչ գնա-
ցին, ըստ ամենայնի զոր պատուիրեցեր
նոցա առնել, եւ ոչ արարին. եւ [8]արա-
րին պատահել իւրեանց ամենայն չա-
24 րեացս այսոցիկ։ Եւ արդ ահա հասեալ
է զօր՝՝ ի քաղաքս առնուլ զսա, եւ
մատնեցաւ քաղաքս ի ձեռս Քաղդէաց-
ւոցն որ տան ընդ սմա պատերազմ յե-
րեսաց սրոյ եւ սովոյ եւ մահու. որ-
պէս եւ խօսեցար նոյնպէս եւ եղեւ, զոր
25 դու իսկ տեսանես։ Եւ դու, [9]Տէր, ա-
սես ցիս, Ստացիր քեզ ագարակ արծա-
թոյ. եւ [10]գրեցի մուրհակ եւ կնքեցի,
եւ կացուցի վկայս՝՝. եւ քաղաքս մատ-
նեցաւ ի ձեռս Քաղդէացւոցն։
26 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
27 Ահա ես Տէր Աստուած ամենայն մսե-
ղեաց. մի թէ [11]թաքչիցի՞ ամենայն բան
28 յինէն։ Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր.

[1] Եբր. Եւ ասէ Երեմիա, Եղեւ բան Տեառն առ իս [2] Եբր. ի գաւիթ [3] Եբր. մերձաւոր ես, գնեսջիր քեզ [4] Եբր. վկայիցն գրելոց

[5] Կամ, դժուարասցի [6] Յեբր. զ–ի–ւ [7] Եբր. ի մարդիկ [8] Եբր. արարեր պատահել նոցա զամենայն չարիս զայսոսիկ։ (24) Ահա պատնէշք, եկին [9] Եբր. Տէր Աստուած [10] Եբր. կացո վկայս [11] Կամ, դժուարասցի՞

[1]Մատնելով մատնեսցի քաղաքդ՝ ի ձեռս
Քաղդէացւոցն, եւ ի ձեռս Նաբուքա-
դոնոսորայ արքային Բաբելացւոց, եւ
29 առցէ զդա։ Եւ եկեսցեն Քաղդէացիքն
պատերազմել ընդ քաղաքիդ, եւ այ-
րեսցեն զդա հրով. եւ հրձիգ [2]արասցեն
զտունս յորս արկանէին խունկս ի վերայ
տանեաց նոցա Բահաղու, եւ զոհէին զոհս
աստուածոց օտարոց վասն զիս դառ-
30 նացուցանելոյ. [3]Որդիքն Իսրայէլի եւ
որդիքն Յուդայ միայն գործէին զչարիս
առաջի աչաց իմոց ի մանկութենէ իւ-
րեանց. [4]բայց որդիքն Իսրայէլի՝ բար-
կացուցին զիս գործովք ձեռաց իւրեանց,
31 ասէ Տէր։ [5]Ի բարկութիւն եւ ի սրտ-
մտութիւն էր ինձ քաղաքդ այդ, յորմէ
օրէ շինեցին զդա մինչեւ ցայսօր, ջնջել
32 զդա յերեսաց իմոց, Վասն ամենայն
չարեաց որդւոցն Իսրայէլի եւ որդւոցն
Յուդայ՝ զոր արարին ի դառնացուցանել
զիս, ինքեանք եւ թագաւորք իւրեանց
եւ մեծամեծք իւրեանց, եւ քահանայք
իւրեանց եւ մարգարէք իւրեանց, արք
33 Յուդայ եւ բնակիչք Երուսաղեմի։ Դար-
ձուցին յիս զթիկունս եւ ոչ զերեսս. եւ
ուսուցի զնոսա ընդ առաւօտս. ուսու-
ցի, եւ ոչ անսացին ընդունել զխրատ.
34 Եւ եդին զպղծութիւնս իւրեանց ի տան՝
35 յորոյ վերայ կոչեցեալ է անուն [6]իմ։ Եւ ա
պղծութեան իւրեանց՝ շինեցին բագինս
Բահաղու ի ձոր որդւոցն Ենովմայ, մա-
տուցանել զուստերս եւ զդստերս իւ-
րեանց Մողոքայ, զոր ոչ պատուիրեցի
նոցա, եւ ոչ անկաւ ի սիրտ իմ առնել
նոցա զպղծութիւնն զայն առ ի յանցու-
ցանելոյ զՅուդա։
36 Եւ արդ այսպէս ասէ Տէր Աստուած
Իսրայէլի վասն քաղաքիդ այդորիկ՝ զոր-
մէ [7]դու ասացեր՝ թէ Մատնեցաւ ի ձեռս
Նաբուքոդոնոսորայ արքային Բաբելաց-
ւոց, ի սուր եւ ի սով եւ [8]ի գերութիւն.
37 Ահա ես ժողովեցից զնոսա յամենայն
երկրէ, ուր ցրուեցի զնոսա անդր բար-
կութեամբ եւ սրտմտութեամբ իմով,
եւ ցասմամբ մեծաւ. եւ դարձուցից
զնոսա ի տեղիս յայս եւ նստուցից զնո-
38 սա [9]յուսով. Եւ եղիցին ինձ ի ժողո-
վուրդ, եւ ես եղէց նոցա յԱստուած.
39 Եւ տաց նոցա սիրտ [10]այլ եւ ճանապարհ
մի՝ երկնչել յինէն զամենայն աւուրս ի
բարութիւն իւրեանց եւ որդւոց իւրեանց
40 յետ նոցա։ Եւ ուխտեցից նոցա ուխտ
յաւիտենական, զոր ոչ դարձուցից յետս,
առնել նոցա բարի. եւ զերկիւղ իմ տաց
ի սիրտս նոցա առ ի չապստամբելոյ նո-
41 ցա յինէն։ [11]Եւ այց արարից՝ բարի առ-
նել նոցա, եւ անկեցից զնոսա յերկրիս
յայսմիկ [12]հաւատովք ամենայն սրտիւ
42 իմով եւ ամենայն անձամբ իմով։ Զի
այսպէս ասէ Տէր. Որպէս ածի ի վերայ
ժողովրդեանդ այդորիկ զամենայն չարիս
մեծամեծս, նոյնպէս ածից ի վերայ դո-
ցա [13]բարիս, զոր խօսեցայ ի վերայ դոցա։
43 Եւ ստասցին միւսանգամ ագարակս յերկ-
րիդ յայդմիկ, զորմէ [14]դուք ասացէք՝
թէ Անապատ է ի մարդոյ եւ յանասնոյ,
եւ մատնեցան ի ձեռս Քաղդէացւոցն։
44 Եւ ստասցին ագարակս արծաթոյ, եւ
գրեսցեն մուրհակս եւ կնքեսցեն, եւ
կացուսցեն վկայս յերկրին Բենիամենի
եւ շուրջ զԵրուսաղեմաւ, եւ ի քաղաքս
Յուդայ եւ ի քաղաքս լերինն, եւ ի քա-
ղաքս [15]Սեփելայ եւ ի քաղաքս [16]Նագե-
բայ. զի դարձուցից զգերութիւնս նո-
ցա, ասէ Տէր։

## ԳԼ. ԼԳ

1 Եւ եղեւ բան Տեառն առ Երեմիա երկ-
րորդ անգամ, եւ նա կայր տակաւին
2 կալեալ [17]ի սրահի բանտին, եւ ասէ. Այս-
պէս ասէ Տէր՝ որ արար [18]զերկիր եւ՝
ստեղծ զդա՝ կանգնել զդա, Տէր անուն
3 է նորա. Կարդա առ իս, եւ տաց քեզ
պատասխանի, եւ պատմեցից քեզ մե-
ծամեծս եւ զօրաւորս՝ զոր ոչ գիտիցես։
4 Զի այսպէս ասէ Տէր Աստուած Իսրա-
յէլի վասն տանց քաղաքիդ այդորիկ,
եւ վասն ապարանից արքայից Յուդայ՝
քակելոց ի մահարձանս եւ [19]ի մարտկոցս,
5 Եկելոցն՝ մարտնչել ընդ Քաղդէացիս,
եւ լնուլ զնոսա դիականբք մարդկան,
զորս հարի բարկութեամբ իմով եւ
սրտմտութեամբ, եւ դարձուցի զերեսս
իմ [20]ի նոցանէ վասն ամենայն չարու-

---

[1]Եբր. Ահա ես տաց զքաղաքս զայս [2]Եբր. այրասցեն զդա եւ [3]Եբր. Զի որդիքն [4]Եբր. զի որդիքն Իսրայէլի հանապազ [5]Եբր. Բանզի ի բարկութիւն [6]Եբր. իմ ի պղծել զնա.(35)Եւ [7]Եբր. դուք ասէք [8]Եբր. ի մահ [9]Եբր. յապահովս

[10]Եբր. մի [11]Եբր. Եւ ուրախ եղէց ի նոսա [12]Եբր. ճշմարտութեամբ [13]Եբր. զամենայն բարիս [14]Եբր. դուք ասէք [15]Այ-ընթ՝ դաշտին [16]Այ-ընթ՝ հարաւոյ [17]Եբր. ի գաւիթ [18]Եբր. զդա, Տէր, որ [19]Եբր. ի մարտկոցս եւ ի սուր, (5) Որ գան [20]Եբր. ի քաղաքէդ

6 թեանց նոցա։ Ահաւասիկ ես ածից
[1]զպախան ի բժշկութիւն", եւ բժշկեցից
զնոսա, եւ յայտնեցից նոցա [2]զհնչիւն
7 խաղաղութեան եւ զհաւատս"։ Եւ դար-
ձուցից զգերութիւնն Յուդայ եւ զգե-
րութիւնն Երուսաղեմի, եւ շինեցից
8 զնոսա իբրեւ զառաջինն։ Եւ սրբեցից
զնոսա յամենայն անիրաւութեանց իւ-
րեանց զոր անիրաւեցան յիս, եւ ոչ եւս
յիշեցից զմեղս նոցա զոր մեղան առ իս
9 եւ ապստամբեցան յինէն։ Եւ եղիցի ինձ
[3]յուրախութիւն եւ յօրհնութիւն" եւ ի
մեծարանս առաջի ամենայն ժողովրդոց
երկրի, որք լուիցեն զամենայն բարու-
թիւնս զոր ես արարից զոցա. եւ եր-
կիցեն եւ [4]զառնայցեն ի վերայ ամենայն
բարութեանցն, եւ ի վերայ ամենայն
խաղաղութեանցն զոր ես արարից [5]զոցա։
10 Այսպէս ասէ Տէր. Դարձեալ լուիցի ի
տեղւոջդ յայդմիկ զորմէ դուքդ ասէք
թէ Աւերակ է ի մարդոյ եւ յանասնոյ, ի
քաղաքս Յուդայ եւ [6]արտաքոյ Երուսա-
ղեմի յաւերակսն՝ առ ի չգոյէ մարդկան եւ
առ ի չգոյէ բնակչաց եւ առ ի չգոյէ անասու-
11 նոյ, Ձայն ուրախութեան եւ ձայն ցնծու-
թեան, ձայն փեսայի եւ ձայն հարսին,
[7]որք ասիցեն", Գոհացարուք զՏեառնէ
ամենակալէ զի քաղցր է, զի յաւի-
տեան է ողորմ նորա. [8]բերցեն պատա-
րագս օրհնութեան ի տուն Տեառն. զի
դարձուցից զգերութիւն երկրիդ այդո-
12 րիկ՝ ըստ առաջնոյն, ասէ Տէր։ Այս-
պէս ասէ Տէր զօրութեանց. Դարձեալ
եղիցին յաւերակ տեղւոջս առ ի չգոյէ
մարդոյ եւ անասնոյ, եւ յամենայն քա-
ղաքս դորա՝ վանք հովուաց եւ մակա-
13 ղատեղք խաշանց, Ի քաղաքս լեռնա-
կանս եւ ի քաղաքս [9]Սեփելայ եւ ի քա-
ղաքս [10]Նագեբայ, եւ յերկրին Բենիա-
մինի եւ շուրջ զԵրուսաղեմաւ եւ ի քա-
ղաքս Յուդայ, դարձեալ անցանիցեն
խաշինք ընդ ձեռն թուողի, ասէ Տէր։
14 Ահա աւուրք գան, ասէ Տէր, եւ հաս-
տատեցից զբանս իմ բարի զոր խօսե-
ցայ ի վերայ տանն Իսրայելի, եւ ի վե-
15 րայ տանդ Յուդայ։ Յաւուրսն յայնոսիկ
եւ ի ժամանակին յայնմիկ ծագեցից
Դաւթի ծագումն արդարութեան, որ
առնիցէ իրաւունս եւ արդարութիւն
16 յերկրի։ Յաւուրսն յայնոսիկ փրկեսցի
Յուդա, եւ Երուսաղէմ բնակեսցէ [11]յու-
սով. եւ այս է անունն՝ զոր կոչեսցէ"
17 նմա, Տէր արդարութիւն մեր։ Զի այս-
պէս ասէ Տէր. Մի՛ պակասեսցէ Դաւ-
թի այր, որ նստիցի յաթոռ տանն Իս-
18 րայելի. Եւ քահանայիցն Ղեւտացւոց՝
մի՛ պակասեսցէ այր յերեսաց իմոց՝ մա-
տուցանել ողջակէզս եւ զոհել զոհս, եւ
[12]արկանել խունկս" զամենայն աւուրս։
19 Եւ եղեւ բան Տեառն առ Երեմիա
20 մարգարէ եւ ասէ, Այսպէս ասէ Տէր.
Եթէ խափանիցէք զուխտ իմ զաւուրն-
ջեան եւ զուխտ իմ զգիշերոյ, զի մի՛
լինիցի տիւ եւ գիշեր ի ժամանակի իւ-
21 րեանց, Ապա եւ ուխտն իմ որ ընդ Դաւ-
թի ծառայի իմոյ է՞ խափանեսցի, չլի-
նել նմա որդի որ թագաւորեսցէ յա-
թոռ նորա, եւ քահանայիցն Ղեւ-
22 տացւոց պաշտօնէից իմոց։ Զոր օրի-
նակ ոչ թուին զօրութիւնք երկնից, եւ
ոչ չափի աւազ ծովու, նոյնպէս բազ-
մացուցից զզաւակն Դաւթի ծառայի ի-
մոյ, եւ զՂեւտացիսն պաշտօնեայս իմ։
23 Եւ եղեւ բան Տեառն առ Երեմիա
24 եւ ասէ, Ո՞չ տեսանես զինչ խօսի ժո-
ղովուրդդ եւ ասեն, եթէ Զազգս զեր-
կուս զոր ընտրեաց Տէր՝ մերժեաց զնո-
սա. եւ զժողովուրդն իմ զայրացուցա-
նեն չլինել միւսանգամ յազգ առաջի
25 նոցա։ Այսպէս ասէ Տէր. Եթէ [13]զուխտ
իմ զաւուրնջեան եւ զգիշերոյ եւ զերկ-
նից եւ զերկրի հաստատութեամբ ոչ
26 կարգեցի," Ապա եւ զզաւակն Յակո-
բայ եւ զԴաւթի ծառայի իմոյ անար-
գեցից, չառնուլ ի զաւակէ նորա իշխան
ի վերայ զաւակին Աբրահամու եւ Իսա-
հակայ եւ Յակոբայ. զի դարձուցից
զդարձ նոցա եւ գթացայց ի նոսա։

## ԳԼ. ԼԴ

1 Բանն որ եղեւ առ Երեմիա [14]ի Տեառ-
նէ։ Եւ" Նաբուքոդոնոսոր արքայ Բա-
բելացւոց եւ ամենայն զօրականն, եւ
ամենայն երկիր որ ընդ իշխանութեամբ
ձեռին նորա, եւ ամենայն ազգք

[1] Եբր. նմա ապեղանիս եւ դեղս [2] Եբր. յաճախութիւն խաղաղութեան եւ ճշմարտութեան [3] Եբր. յանուն ուրախութեան, ի գովութիւն [4] Եբր. դողասցեն [5] Եբր. նմա (երկրին) [6] Եբր. ի փողոցս [7] Եբր. ձայն որոց ասեն [8] Եբր. որոց բերեն [9] Այսինքն՝ դաշտականս [10] Այսինքն՝ հարաւոյ

[11] Եբր. յապահով. եւ այս է անունն որ կոչեսցի [12] Եբր. մատուցանել պատարագս [13] Եբր. չէ իմ ուխտս եղեալ տուընջեան եւ գիշերոյ, եւ ոչ կանոնս երկնից եւ երկրի [14] Եբր. ի Տեառնէ, յորժամ

մարտնչէին ընդ Երուսաղեմի, եւ ընդ
ամենայն քաղաքսն Յուդայ, եւ ասէ,
2 Այսպէս ասէ Տէր Աստուած Իսրայէլի.
Երթ առ Սեդեկիա արքայ Յուդայ, եւ
ասասցես ցնա, Այսպէս ասէ Տէր. Մատ-
նելով մատնեսցի քաղաքդ այդ ի ձեռս
արքային Բաբելացւոց, [1]եւ առցէ զդա,"
3 եւ այրեսցէ զդա հրով. Եւ դու ոչ ապ-
րեսցիս ի ձեռաց նորա, այլ ըմբռնելով
ըմբռնեսցիս, եւ ի ձեռս նորա մատնեսցիս,
եւ աչք քո զաչս [2]նորա տեսցեն, եւ բերան
ի բերան խօսեսցիս ընդ նմա, եւ ի Բա-
4 բելոն երթիցես։ Այլ լուր զպատգամս
Տեառն, Սեդեկիա արքայ Յուդայ. այսպէս
5 ասէ Տէր վասն քո. Ոչ մեռցիս սրով, Այլ
խաղաղութեամբ մեռանիցիս. եւ որպէս
[3]լացին զհարսն քո զթագաւորսն առաջինս"
որ եղեն յառաջքան զքեզ, [4]նոյնպէս լացցեն
եւ զքեզ, թէ Վա՜յ, վա՜յ, տէր, եւ կոծեսցին
զքեզ. զի մեծամեծս" խօսեցայ, ասէ Տէր։
6 Եւ խօսեցաւ Երեմիա մարգարէ առ
Սեդեկիա արքայ Յուդայ զամենայն
7 զբանս զայսոսիկ յԵրուսաղէմ։ Եւ զօր
թագաւորին Բաբելացւոց մարտնչէր ընդ
Երուսաղեմի եւ ընդ ամենայն քաղաքսն
Յուդայ ընդ մնացեալսն, ընդ Ղաքիսայ եւ
ընդ Ազեկայ, զի նոքա մնացեալ էին ի
քաղաքացն Յուդայ քաղաքք ամուրք։
8 Բանն որ եղեւ առ Երեմիա ի Տեառ-
նէ, յետ կատարելոյ Սեդեկեայ արքայի
զուխտն ընդ ամենայն ժողովրդեանն
որ յԵրուսաղէմ, կոչել նոցա թողութիւն,
9 Արձակել իւրաքանչիւր ումեք զծառայ
իւր, եւ իւրաքանչիւր զաղախին, զայր
Եբրայեցին եւ զկին Եբրայեցի՝ ազատս.
եւ մի՛ ծառայել առն յազգէ Յուդայ եղբօր
10 իւրում։ Եւ [5]դարձան ամենայն մեծամեծք
եւ ամենայն ժողովուրդն որ մտեալ էին
յուխտ՝ արձակել իւրաքանչիւր զծառայ
իւր, եւ իւրաքանչիւր զաղախին իւր՝
[1]զայր Եբրայեցի եւ զկին Եբրայեցի" ա-
զատս, եւ ոչ եւս ծառայել նոցա. լուան
11 եւ արձակեցին. Եւ յետոյ դարձան, եւ
դարձուցին անդրէն զծառայս եւ զա-
ղախնայս՝ զորս արձակեցին ազատս, եւ
կալան զնոսա ի ծառայս եւ յաղախնայս։
12 Եւ եղեւ բան Տեառն առ Երեմիա ի

13 Տեառնէ, եւ ասէ, Այսպէս ասէ Տէր
Աստուած Իսրայէլի. Ես եդի ուխտ ընդ
հարսն ձեր՝ յաւուր յորում փրկեցի զնո-
սա յերկրէն Եգիպտացւոց, ի տանէ ծա-
14 ռայութեան, եւ ասեմ, Թէ յորժամ վեց
ամ լցցի, արձակեսցես զեղբայրն քո զԵբ-
րայեցի որ վաճառեսցի քեզ, եւ գործեսցէ
քեզ զվեց ամ, եւ արձակեսցես զնա ազատ
ի քէն. եւ ոչ լուան ինձ հարքն ձեր, եւ
15 ոչ խոնարհեցուցին զունկն իւրեանց։ Եւ
[6]դարձան այսօր առնել զհաճոյս առաջի
աչաց իմոց, կոչել իւրաքանչիւր թո-
ղութիւն ընկերի իւրում. եւ [7]կատա-
րեցին զուխտն առաջի իմ ի տանն յորոյ
16 վերայ կոչեցեալ է անուն իմ։ Եւ չրջեցէք
եւ պղծեցէք զանուն իմ, [8]դառնալ իւրա-
քանչիւր ի ծառայ իւր, եւ իւրաքանչիւր
յաղախին իւր, զորս արձակեցէք ազատս
ոգւոց ձերոց". եւ վարձուցէք զնոսա
լինել ձեզ ի ծառայս եւ յաղախնայս։
17 Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր. Դուք
ոչ լուարուք ինձ կոչել արձակուրդ իւ-
րաքանչիւր եղբօր իւրում, եւ իւրա-
քանչիւր մերձաւորի իւրում. ահաւա-
սիկ ես կոչեցից ձեզ արձակուրդ, ասէ
Տէր, ի սուր եւ ի սով եւ ի մահ. եւ
տաց զձեզ ի ցրումն ընդ ամենայն թա-
18 գաւորութիւնս երկրի։ Եւ տաց զարսդ
որ անցին զուխտիւ իմով, եւ ոչ կացին ի
բանս ուխտի իմոյ զոր արարին առաջի
իմ, զորթն զոր կտրեցին եւ անցին ընդ
19 մէջ յօշուածոյն նորա, Զիշխանս Յու-
դայ եւ զիշխանս Երուսաղեմի, եւ զներ-
քինիս եւ զքահանայս, եւ զամենայն
ժողովուրդ երկրին, որ անցին ընդ մէջ
20 յօշուածոյ որթուն, Տաց զնոսա ի ձեռս
թշնամեաց նոցա եւ ի ձեռս խնդրողաց
անձանց նոցա, եւ [9]արկից զդիակունս"
նոցա կերակուր թռչնոց երկնից եւ գա-
21 զանաց երկրի։ Եւ զՍեդեկիա արքայ
Հրէաստանի եւ զիշխանս նորա տաց ի
ձեռս թշնամեաց իւրեանց, եւ ի ձեռս
խնդրողաց անձանց նոցա, եւ ի ձեռս
զօրու արքային Բաբելացւոց, որ [10]եկեալ
22 հասեալ են ի վերայ նոցա"։ Ահաւասիկ
ես հրաման տաց, ասէ Տէր, եւ դար-
ձուցից զնոսա այդրէն ի քաղաքդ. մար-

[1]Եբր. դ—լ—ւէ [2]Եբր. արքային Բաբելացւոց
[3]Եբր. ծխեցին խունկս հարցն քոց թագաւորաց
առաջնոց [4]Եբր. ծխեսցեն եւ քեզ, եւ կո-
ծեսցին զքեզ, Վա՜յ, վա՜յ, տէր. զի զբանն ես
[5]Եբր. անսացին

[6]Եբր. դարձայք [7]Եբր. կատարեցէք [8]Եբր.
դարձուցանել իւրաքանչիւր զծառայ իւր եւ
իւրաքանչիւր զաղախին իւր զորս արձակեցէք
յուղէտ յուկամ [9]Եբր. եղիցին դիակունք
[10]Եբր. եւ ի ձէնջ

տիցեն ընդ դմա եւ առցեն զդա, եւ
այրեսցեն զդա հրով. եւ զքաղաքսն
Յուդայ տաց յանապատ ի բնակչաց իւ-
րեանց։

Գլ. ԼԵ

1 Բանն որ եղեւ առ Երեմիա ի Տեառնէ
յաւուրս Յովակիմայ որդւոյ Յովսեայ
2 արքայի Յուդայ, եւ ասէ, Երթ ի տուն
Ռաքաբիմայ, եւ [1]կոչեա զնոսա˝, եւ ած-
ցես ի տուն Տեառն ի մի ի սրահից ան-
3 տի, եւ արբուսցես նոցա գինի։ Եւ ածի
զՅեքոնիա որդի Երեմեայ որդւոյ Քաբա-
սինեայ, եւ զեղբարս նորա եւ զամե-
նայն որդիս նորա, եւ զամենայն տուն
4 Ռաքաբիմայ. [2]Ածի ի տուն Տեառն, ի
գանձիճ որդւոյն Անանեայ որդւոյ Գոդո-
ղեայ առն Աստուծոյ, որ էր մերձ ի
տուն իշխանացն, ի վերայ ապարանիցն
Մասսեայ՝ որդւոյ Սեղովմայ վարապա-
5 հի։ Եւ եդի առաջի որդւոցն Ռաքաբի-
մայ [3]աման մի˝ լի գինւով եւ բաժակս.
եւ ասեմ ցնոսա, Արբէք գինի այսպէս։
6 Եւ ասեն, Ոչ արբցուք գինի. զի Յով-
նադաբ որդի Ռեքաբայ հայր մեր պա-
տուիրեաց մեզ եւ ասէ, Մի՛ ըմպիցէք
գինի դուք եւ որդիքն ձեր մինչեւ ցյա-
7 ւիտեան. Եւ մի՛ շինիցէք տունս, եւ մի՛
սերմանիցէք սերմանս, եւ մի՛ տնկէք
այգիս[4]. այլ ի վրանս բնակիցէք զամե-
նայն աւուրս ձեր, զի կեցջիք աւուրս
բազումս յերկրին յորում շրջիցիք դուք
8 ի դմա։ Եւ լուաք բարբառոյ Յովնադա-
բայ որդւոյ Ռեքաբայ հօր մերում՝ ըստ
ամենայնի զոր պատուիրեաց մեզ չըմ-
պել գինի զամենայն աւուրս մեր, մեք
եւ կանայք մեր եւ ուստերք եւ դստերք
9 մեր. Եւ ոչ շինել տունս եւ ոչ բնակել
ի նոսա. եւ այգիք եւ անդք եւ
10 սերմանիք ոչ եղեն մեր. Եւ բնակեցաք
վրանօք, եւ լուաք եւ արարաք ըստ
ամենայնի, զոր պատուիրեաց մեզ Յով-
11 նադաբ հայր մեր։ Եւ եղեւ իբրեւ
ել Նաբուքոդոնոսոր արքայ Բաբելաց-
ւոց յերկիրս յայս, ասացաք, Եկայք եւ
մտցուք յԵրուսաղէմ, յերեսաց զօրուն
Քաղդէացւոց, եւ յերեսաց զօրուն Ա-
սորեստանեայց, եւ [5]բնակեսցուք անդ˝։
12 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ա-
13 սէ, Այսպէս ասէ Տէր զօրութեանց՝ Աս-
տուած Իսրայելի. Երթ եւ ասա ցարս
Յուդայ եւ ցբնակիչս Երուսաղեմի, Ո՞չ
առնուցուք խրատ լսել բանից իմոց,
14 ասէ Տէր։ [6]Կացին ի բանի որդիքն˝ Յով-
նադաբայ որդւոյ Ռեքաբայ զոր պա-
տուիրեաց որդւոց իւրոց՝ չըմպել գինի,
եւ ոչ արբին մինչեւ ցայսօր, զի լուան
պատուիրանի հօրն իւրեանց. եւ ես խօ-
սեցայ ընդ ձեզ կանխաւ, եւ ոչ լուա-
15 րուք ինձ։ Եւ առաքեցի առ ձեզ զա-
մենայն ծառայս իմ զմարգարէս կան-
խեալ եւ առաքեալ, բամ, Դարձարուք
իւրաքանչիւր ի ճանապարհէ իւրմէ չա-
րէ, եւ լաւագոյնս արարէք զիրս ձեր.
եւ մի՛ երթայք զհետ աստուածոց օտա-
րաց ծառայել նոցա, եւ բնակիցէք յերկ-
րին զոր ետու ձեզ եւ հարցն ձերոց.
եւ ոչ խոնարհեցուցէք զունկն ձեր, եւ
16 ոչ լուարուք ինձ։ Եւ կացուցին որդիքն
Յովնադաբայ որդւոյ Ռեքաբայ զպա-
տուէր հօրն իւրեանց զոր պատուիրեաց
նոցա, եւ ժողովուրդդ այդ ոչ լուան
17 ինձ։ Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր
զօրութեանց՝ Աստուած Իսրայելի. Ա-
հաւասիկ ես ածից ի վերայ Յուդայ եւ
ի վերայ ամենայն բնակչաց Երուսաղեմի
զամենայն չարիս զոր խօսեցայ ի վերայ
նոցա. փոխանակ զի խօսեցայ առ նո-
սա, եւ ոչ լուան, կոչեցի զնոսա, եւ ոչ
ետուն ինձ պատասխանի։
18 Եւ առ տունն Ռեքաբայ ասաց Երեմիա,
Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր զօրու-
թեանց՝ Աստուած Իսրայելի. Փոխանակ
զի [7]լուան որդիքն Յովնադաբայ որդւոյ
Ռեքաբայ պատուիրանի հօր իւրեանց, եւ
պահեցին˝ զամենայն հրամանս նորա,
առնել ըստ ամենայնի զոր պատուիրեաց
19 [8]նոցա հայրն իւրեանց˝, Վասն այնորիկ
այսպէս ասէ Տէր զօրութեանց՝ Աստուած
Իսրայելի. Մի՛ պակասեսցէ այր յորդւոցն
Յովնադաբայ որդւոյ Ռեքաբայ յանդի-
ման կալ առաջի իմ զամենայն աւուրս
[9]երկրի։

Գլ. ԼԶ

1 Եւ յամին չորրորդի Յովակիմայ որդ-
ւոյ Յովսեայ արքայի Յուդայ, եղեւ
2 բան Տեառն առ իս, եւ ասէ, Առ դու

[1] Ոմանք. խօսեաց առ նոսա [2] Ոմանք. Եւ ածի զնոսա
[3] Ոմանք. ամանս [4] Ոմանք. այգիս [illegible], եւ մի՛
եղիցին ձեզ [5] Ոմանք. բնակեսցուք յԵրուսաղէմ

[6] Ոմանք. Հաստատեցաւ բանն [7] Ոմանք. լուարուք
պատուիրանի Յովնադաբայ հօր ձերոյ, եւ պա-
հեցէք [8] Ոմանք. ձեզ [9] Յոմանս. [illegible]

քեզ քարտէս մատենի, եւ գրեա՛ ի նմա
զամենայն զբանս զոր հրաման ետու
քեզ ի վերայ Իսրայէլի եւ ի վերայ Յու-
դայ եւ ի վերայ ամենայն ազգաց՝ յօրէ
յորմէ խօսեցայ ես ընդ քեզ, յաւուրցն
Յովսեայ արքայի Յուդայ եւ մինչեւ
3 ցայսօր. Թերեւս լուիցեն տունն Յու-
դայ զամենայն չարիս զոր խորհեալ եմ
ես առնել նոցա. զի դարձցին իւրա-
քանչիւր ի ճանապարհէ իւրմէ չարէ, եւ
քաւիչ եղէց անօրէնութեանց նոցա եւ
մեղաց նոցա։
4 Եւ կոչեաց Երեմիա զԲարուք որդի
Ներեայ, եւ գրեաց Բարուք ի բերանոյ
Երեմիայի զամենայն զբանս Տեառն զոր
հրաման ետ նմա՝ ի քարտիսի մատենին։
5 Եւ պատուիրեաց Երեմիա Բարուքայ
եւ ասէ, Ես ի կալանս եմ, եւ ոչ
6 կարեմ մտանել ի տուն Տեառն. Եւ
դու մտցես եւ ընթերցցիս ի մատենէդ,
զոր գրեցեր ի բերանոյ իմոյ, զբանս
Տեառն յականջս ժողովրդեանն ի տան
Տեառն յաւուր պահոց, եւ յականջս ա-
մենայն Յուդայ որ մտանեն ի քաղա-
7 քաց իւրեանց՝ ընթերցցիս։ Թերեւս
անկցի գութ ի սիրտ նոցա առաջի Տեառն,
եւ դարձցին իւրաքանչիւր ի ճանապար-
հաց իւրեանց չարաց. զի մեծ է սրտ-
մտութիւն եւ բարկութիւն Տեառն, զոր
խօսեցաւ Տէր ի վերայ ժողովրդեանդ
8 այդորիկ։ Եւ արար Բարուք որդի Ներեայ
ըստ ամենայնի զոր պատուիրեաց նմա
Երեմիա մարգարէ, ընթերցանել ի մա-
տենէն զպատգամս Տեառն ի տան Տեառն։
9 Եւ եղեւ յամին հինգերորդի Յովա-
կիմայ որդւոյ Յովսեայ արքայի Յուդայ՝
յամսեանն իններորդի, ժողովեցաւ ի
պահս առաջի Տեառն ամենայն ժողո-
վուրդն Երուսաղեմի, եւ ամենայն ժո-
ղովուրդն որ դային ի քաղաքացն Յու-
դայ յԵրուսաղէմ, [1]եւ տունն Յուդայ։"
10 Եւ ընթերցաւ Բարուք ի մատենէն զբանս
Երեմիայի ի տան Տեառն, [2]ի սրահին
Գամարեայ որդւոյ Սափանեայ դպրապե-
տի, [3]ի մուտս նորոյ դրանն տան Տեառն՝
յականջս ամենայն ժողովրդեանն։
11 Եւ իբրեւ լուաւ Միքիա որդի Գա-
մարեայ որդւոյ Սափանեայ զամենայն
պատգամս Տեառն ի մատենէ անտի,
12 էջ ի տուն թագաւորին ի գլուան դպրա-
պետին. եւ անդ նստէին ամենայն իշ-
խանքն, Եղիսամա դպրապետ, եւ Դա-
ղիա որդի Սամէի, եւ Եղնաթան որդի
Աքոբովրայ, եւ Գամարիա որդի Սա-
փանեայ, եւ Սեդեկիա որդի Անանեայ,
13 եւ ամենայն իշխանքն։ Եւ պատմեաց
նոցա Միքիա զամենայն զբանս զոր
լուաւ յընթեռնուլ Բարուքայ ի մա-
տենէ անտի յականջս ժողովրդեանն։
14 Եւ առաքեցին ամենայն իշխանքն առ
Բարուք զՅուդի որդի Նաթանայ որդ-
ւոյ Սեղովմայ որդւոյ Քուսեայ, եւ ա-
սեն, Զմատեանն զոր ընթեռնուիր յա-
կանջս ժողովրդեանն, ա՛ռ ի ձեռս քո
եւ եկ այսր. եւ ա՛ռ Բարուք որդի Նե-
րեայ զմատեանն ի ձեռս իւր, եւ էջ առ
15 նոսա. Եւ ասեն ցնա, Ա՛րդ, դարձեալ
ընթերցիր յականջս մեր. եւ ընթերցաւ
16 Բարուք յականջս նոցա։ Եւ եղեւ իբ-
րեւ լուան զամենայն զպատգամսն,
[4]խորհեցան իւրաքանչիւր ընդ ընկերի
իւրում", եւ ասեն ցԲարուք, Պատմե-
լով պատմեսցուք արքայի զամենայն
17 զբանսդ զայդոսիկ։ Հարցին ցԲարուք
եւ ասեն, Ա՛րդ, պատմեա մեզ, [5]ուս-
տի՞ գրեցեր զամենայն զբանսդ զայդո-
18 սիկ, [6]յո՞յր բերանոյ"։ Եւ ասէ ցնոսա Բա-
րուք, [7]Ի բերանոյ Երեմիայի. նա" պատ-
մեաց ինձ զամենայն զբանս զայսոսիկ,
19 եւ ես գրեցի ի մատենիս սեւակաւ։ Եւ
ասեն իշխանքն ցԲարուք, Երթ թաքիր
դու եւ Երեմիա, եւ մի՛ ոք գիտասցէ
թէ ուր իցէք։
20 Եւ մտին առ արքայ ի սրահ անդր.
եւ զմատեանն ետուն պահել ի տան Ե-
ղիսամայ դպրապետի, եւ պատմեցին
21 արքայի զամենայն զբանսն։ Եւ առա-
քեաց արքայն զՅուդի առնուլ զմա-
տեանն. եւ առ զայն ի տանէ Եղիսա-
մայ դպրապետի, եւ ընթերցաւ Յուդի
յականջս թագաւորին եւ յականջս ա-
մենայն իշխանացն որ կային շուրջ զթա-
22 գաւորաւն։ Եւ թագաւորն նստէր ի
ձմերատանն յամսեանն իններորդի, եւ
23 կրակարան հրոյ առաջի նորա։ Եւ եղեւ
իբրեւ ընթերցաւ Յուդի երիս էջս կամ
չորս, կտրեաց զայն զմելինաւ դպրա-
պետին, եւ ընկէց ի կրակն որ կայր ի
վերայ կրակարանին, մինչեւ սպառեցաւ

[1] Յեբր. դ—լ—ոե [2] Եբր. ի գիւանին [3] Եբր. ի դա-
թին վերնում, ի մուտս

[4] Եբր. Հոյեցան ահիւ իւրաքանչիւր ընդ ընկեր
իւր [5] Եբր. զիարդ [6] Եբր. ի բերանոյ
նորա [7] Եբր. Նա ի բերանոյ

ամենայն քարտէսն ի հուր կրակարանին։
24 Եւ ոչ [1]խնդրեցին , եւ ոչ պատառեցին
զպատմուճանս իւրեանց թագաւորն եւ
ամենայն ծառայք իւր որք լուան զա-
25 մենայն զբանսն զայնոսիկ ։ Եւ Եղնա-
թան եւ Դողեա եւ Գամարիա եկին ի
մոտ արքայի՝ չայրել զքարտէսն , եւ ոչ
26 անսաց նոցա ։ Եւ հրաման ետ արքայ
Յերեմիելի որդւոյ արքայի , եւ Սարեայ
որդւոյ Եզրիելի , եւ Սեղեմիայ որդւոյ
Աբդիելի , ունել զԲարուք դպրապետ
եւ զԵրեմիա մարգարէ . եւ [2]նոքա չա-
գան թաքեան"։
27 Եւ եղեւ բան Տեառն առ Երեմիա
յետ այրելոյ թագաւորին զքարտէսն եւ
զամենայն բանս զոր գրեաց Բարուք ի
28 բերանոյ Երեմիայի , եւ ասէ , Դարձեալ
առ դու այլ քարտէս , եւ գրեա ի նմա
զամենայն զբանսն զառաջինս , որ էին
յառաջնում քարտիսին , զոր այրեաց
29 Յովակիմ արքայ Յուդայ ։ Եւ ցՅովա-
կիմ արքայ Յուդայ ասասցես , Այսպէս
ասէ Տէր. Դու այրեցեր զմատեանն զայն
եւ ասացեր , թէ Ընդէ՞ր գրեցեր ի նմա
եւ ասացեր , Մտանելով մտցէ արքայն
Բաբելացւոց , եւ ջնջեսցէ զերկիրդ զայդ ,
պակաս արասցէ ի դմանէ զմարդ եւ զա-
նասուն ։
30 Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր ի
վերայ Յովակիմայ արքայի Յուդայ. Մի՛
մնասցէ նորա որ նստցի յաթոռն Դաւ-
թի , եւ դիակունք նորա եղիցին ան-
կեալ ի տաւէ ի սօթի , եւ ցիշերի ի
31 ցուրտ . Եւ այց արարից ի վերայ նորա ,
եւ ի վերայ ազգի նորա , եւ ի վերայ
ծառայից նորա՝ ըստ անօրէնութեանց
նորա . եւ ածից ի վերայ նոցա եւ ի վե-
րայ բնակչաց Երուսաղեմի եւ ի վերայ
[3]երկրին Յուդայ զամենայն չարիս զոր
խօսեցայ ի վերայ դոցա , եւ ոչ լուան ։
32 Եւ առ Երեմիա այլ քարտէս , եւ ետ
ցԲարուք որդի Ներեայ դպրապետ , եւ
գրեաց ի նմա ի բերանոյ Երեմիայի զա-
մենայն բանս մատենին զոր այրեաց Յո-
վակիմ արքայ Յուդայ ի կրակի . եւ այլ
եւս բանք յաւելան ի նոյն առաւել քան
զայնս ։

ԳԼ. ԼԷ

1 Եւ թագաւորեաց Սեդեկիա որդի Յով-
սեայ փոխանակ Յեքոնեայ որդւոյ Յո-
վակիմայ , զոր թագաւորեցոյց Նաբու-
քոդոնոսոր արքայ Բաբելացւոց՝ [4]թա-
2 գաւորել ի վերայ" Յուդայ ։ Եւ ոչ լուաւ
նա, եւ ծառայք իւր եւ ժողովուրդ երկ-
րին զբանս Տեառն զոր խօսեցաւ ի ձեռն
3 Երեմիայի մարգարէի ։ Եւ առաքեաց
արքայ Սեդեկիա զՅովաքազ զորդի Սե-
ղեմեայ , եւ զՍոփոնիա որդի Մաասե-
եայ զքահանայ առ Երեմիա մարգարէ եւ
ասէ . Կաց դու յաղօթս ի վերայ մեր առ
4 Տէր Աստուած մեր ։ Եւ Երեմիա [5]անց
ընդ մէջ ամբոխին եւ եկն , եւ ոչ ար-
կին զնա ի բանտ"։ Եւ զօրն Փարաւո-
նի ել յերկրէն Եգիպտացւոց , եւ լուան
Քաղդէացիքն որոց պաշարեալ էր զԵ-
րուսաղէմ զլուր նոցա, եւ ելին յԵրու-
սաղեմէ ։
5 Եւ եղեւ բան Տեառն առ Երեմիա
6 մարգարէ , եւ ասէ , Այսպէս ասէ Տէր
Աստուած Իսրայէլի . Այսպէս ասասջիք
ցարքայն Յուդայ որ առաքեաց զձեզ
առ իս խնդրել զիս . Ահա զօրն Փարա-
ւոնի որ ել ձեզ յօգնականութիւն՝ դարձ-
7 ցի անդրէն յԵգիպտոս . Եւ Քաղդէա-
ցիքն դարձցին այսրէն , եւ մարտիցեն
ընդ քաղաքիս ընդ այսմիկ , եւ առցեն
8 զսա , եւ այրեսցեն զսա հրով ։ Այսպէս
ասէ Տէր . Մի՛ կարծէք յանձինս ձեր
թէ եկին գնացին Քաղդէացիքն ի մէնջ .
9 չեն թափելոց ի ձէնջ . Թէպէտ եւ զա-
մենայն զօրն Քաղդէացւոց որ մարտնչէին
ընդ ձեզ՝ կոտորիցէք , խոցքն որ մնաս-
ցեն ի նոցանէ՝ յիւրաքանչիւր տեղւոջէ
յարիցեն եւ այրեսցեն հրով զքաղաքդ ։
10 Եւ եղեւ իբրեւ մերժեցաւ զօր Քաղ-
դէացւոցն յԵրուսաղեմէ , յերեսաց զօ-
11 րացն Փարաւոնի , Ել Երեմիա յԵրուսա-
ղեմէ երթալ յերկիրն Բենիամենի , [6]գնել
12 անդ" բաժին ի մէջ ժողովրդեանն . Եւ
եկն եհաս ի դուռն Բենիամենի . եւ անդ
էր [7]այր մի առ ում մտեալ էր նորա ,
անուն Սարու" որդի Սեղեմեայ , որդ-
ւոյ Անանեայ . կալաւ զԵրեմիա մար-
գարէ եւ ասէ , Առ Քաղդէացիսն փա-
13 խուցեալ երթաս ։ Եւ ասէ Երեմիա ,
Սուտ ասես , չերթամ փախուցեալ առ
Քաղդէացիսն . եւ ոչ անսաց նմա , եւ

[1] Եբր. երկեան [2] Եբր. թաքոյց զնոսա Տէր [3] Եբր. առն

[4] Եբր. յերկրին [5] Եբր. մտանէր եւ ելանէր ի մէջ ժողովրդեանն, եւ ոչ էր արկեալ զնա ի տուն բանտին [6] Եբր. առնուլ անտի [7] Եբր. ստրկան մի անուն Յերիա

կալաւ [1]Սարու զԵրեմիա , եւ ած առ
14 իշխանսն ։ Եւ զայրացան իշխանքն ի
վերայ Երեմիայի , զան հարին եւ ետուն
զնա ի տուն բանտի , յապարանս Յով-
նաթանու դպրապետի . քանզի զնորա
ապարանսն արարին բանտ ։
15 [2]Եկն Երեմիա ի տուն գբոյն [3]յԱյնրի-
նոյթն , եւ նստաւ անդ Երեմիա զա-
16 ւուրս բազումս ։ Առաքեաց արքայ Սե-
դեկիա եւ կոչեաց զնա . եւ եհարց զնա
թագաւորն ի տան իւրում ի ծածուկ, եւ
ասէ ցնա , Եթէ իցէ՞ ինչ պատգամ ի
Տեառնէ ։ Եւ ասէ Երեմիա , Այո , է .
եւ ասէ , Ի ձեռս թագաւորին Բաբե-
17 լացւոց մատնեսցիս ։ Եւ ասէ Երեմիա
ցթագաւորն Սեդեկիա , Զի՞նչ մեղայ
քեզ եւ ծառայից քոց եւ ժողովրդեանդ ,
18 զի [4]տաս դու" զիս ի տուն բանտին . Եւ
ո՞ւր են մարգարէքն ձեր որ մարգա-
րէանային եւ ասէին՝ թէ Ոչ է գալոց
արքայն Բաբելացւոց ի վերայ ձեր յեր-
19 կիրս յայս ։ Եւ արդ լուր , աղաչեմ, տէր
իմ արքայ , անկցի ողորմ իմ առաջի
քո . եւ [5]ընդէ՞ր դարձուցանես" զիս ի
տուն Յովնաթանայ դպրապետի, եւ անդ
20 մեռանիցիմ ։ Հրաման ետ արքայ Սե-
դեկիա , եւ [6]արկին զնա ի տուն բան-
տի". եւ տային նմա աւուրն նկանակ
մի հաց արտաքուստ ի հացագործացն ,
մինչեւ հատաւ ամենեւին հաց ի քա-
ղաքէն . եւ նստաւ Երեմիա [7]ի սրահի
բանտին ։

ԳԼ . ԼԸ

1 Եւ լուաւ Սափատիա որդի Մատթա-
նայ , եւ Գոդողիա որդի Պասքովրայ ,
եւ Յովաքաղ որդի Սեղեմեայ , եւ Պաս-
քովր որդի Մելքեայ , զբանս Երեմիա-
յի, զոր խօսէր առ ամենայն ժողովուրդն,
2 եւ ասէր , Այսպէս ասէ Տէր . Որ նստի
ի քաղաքիս յայսմիկ՝ մեռցի սրով եւ սո-
վով եւ մահուամբ . եւ որ ելանէ առ
Քաղդէացիսն՝ կեցցէ , եւ եղիցի նմա
3 անձն իւր ի գիւտս , եւ կեցցէ ։ Զի այս-
պէս ասէ Տէր . Մատնելով մատնեսցի
քաղաքդ ի ձեռս զօրու թագաւորին
4 Բաբելացւոց , եւ առցէ զդա ։ Եւ ա-
սեն իշխանքն ցթագաւորն . Սպանցի
այրն այն . զի այնու լուծանէ նա զձեռս
արանց պատերազմողաց մնացորդաց
քաղաքիս այսորիկ , եւ զձեռս ամենայն
ժողովրդեանդ , խօսել ընդ դոսա ըստ
բանիցդ այդոցիկ , զի այրն այն ոչ [8]օգ-
տի եւ խաղաղութեան բանս խօսի ընդ
5 ժողովրդեանն" այլ չարի ։ Եւ ասէ ար-
քայ Սեդեկիա , Ահաւանիկ կայ ի ձեռս
ձեր . քանզի ոչ ինչ [9]էր ձեռնհաս առ
6 նոսա" եւ ոչ իւիք ։ Եւ առին զԵրե-
միա , եւ ընկեցին զնա ի գուբն Մեղ-
քեայ որդւոյ թագաւորին, որ էր [7]ի սրահի
բանտին. եւ իջուցին զԵրեմիա պարանօք
ի գուբն. եւ ի գբի անդ ջուր ոչ էր , այլ
լոկ տիղմ. եւ կայր Երեմիա ի տղմին ։
7 Եւ լուաւ Աբդեմելէք Եթէովպացի՝
այր ներքինի , եւ ինքն էր յապարանս
թագաւորին , թէ արկին զԵրեմիա ի
գուբն . եւ արքայ նստէր առ դրան Բե-
8 նիամինի . Եւ ել առ նա Աբդեմելէք
յապարանից թագաւորին , եւ խօսեցաւ
9 ընդ թագաւորին եւ ասէ , Տէր արքայ ,
չարիս գործեցին արքն այնոքիկ ըստ
ամենայնի զոր արարին Երեմիայի մար-
գարէի . զի արկին զնա ի գուբն , եւ
մեռանի ի ներքս,[10] չարիս գործեցեր սպա-
նանել զայրն Աստուծոյ," յերեսաց սո-
վոյս այսորիկ , զի ոչ գոյանի հաց ի քա-
10 ղաքիս ։ Եւ հրամայեաց թագաւորն Աբ-
դեմելեքայ Եթէովպացւոյ եւ ասէ , Առ
ընդ քեզ աստի արս երեսուն , եւ
հանէք զմարգարէն ի գբոյ անտի, զի մի՛
11 մեռցի ։ Եւ առ Աբդեմելէք զարսն ընդ
իւր , եւ եկն յապարանս թագաւորին ի
ղետնափոր տուն գանձին . առ անտի
կապերտս հինս եւ [11]պարանս հինս", եւ
12 ընկէց զայն առ Երեմիա ի գուբն[12]. Եւ
ասէ Աբդեմելէք Եթէովպացի ցԵրեմիա .
Դիր զհին կապերտսդ եւ զբուրդդ ընդ
անթովք ձեռաց քոց ի ներքոյ պարա-
13 նացդ . եւ արար Երեմիա այնպէս ։ Եւ
ձգեցին զնա պարանօքն , եւ հանին զնա
ի գբոյ անտի . եւ նստաւ Երեմիա [7]ի
սրահի բանտին ։
14 Եւ առաքեաց արքայ Սեդեկիա , եւ
կոչեաց առ ինքն [13]զմարգարէն ի տուն
Ասադիայն", որ էր ի տան Տեառն .

[1]Եբր. Յերիա [2]Եբր. Իբրեւ եկն [3]Եբր. եւ ի խուցսն [4]Եբր. ետուք [5]Եբր. մի՛ դարձուցաներ [6]Եբր. եդին զնա ի գաւթի բանտին [7]Եբր. ի գաւթի

[8]Եբր. է ի խնդիր խաղաղութեան ժողովրդեանդ այդորիկ [9]Եբր. է ձեռնհաս արքայ առ ձեզ [10]Յեբր. պակաս [11]Եբր. կապերտս պատառատունս [12]Եբր. յաւելու, պարանօք [13]Եբր. զԵրեմիա մարգարէ յերրորդ մուտն

եւ ասէ ցնա արքայն, Հարցանեմ ինչ
ցքեզ բան, մի՛ ինչ թէ թաքուցանի-
15 ցես յինէն զբանն։ Եւ ասէ Երեմիա
ցթագաւորն, Եթէ պատմեցից քեզ, ո՞չ
ապաքէն մահու սպանանիցես զիս, եւ
եթէ տաց ինչ քեզ խրատ, ոչ անսաս
16 ինձ։ Եւ երդուաւ նմա արքայ Սեդե-
կիա գաղտ, եւ ասէ, Կենդանի է Տէր
որ արար ի մեզ զշունչս զայս, թէ իցէ
սպանից զքեզ, կամ թէ իցէ մատնեցից
ի ձեռս արանցն, որ խնդրեն զանձն քո։
17 Եւ ասէ ցնա Երեմիա, Այսպէս ասէ Տէր
զօրութեանց՝ Աստուած Իսրայելի. Ե-
թէ ելանելով ելցես առ [1]զօրավարս ար-
քային Բաբելացւոց, կեցցէ անձն քո,
եւ քաղաքս ոչ այրեսցի հրով, եւ կեց-
18 ցես դու եւ տուն քո։ Ապա թէ ոչ ել-
ցես առ իշխանս արքային Բաբելացւոց,
մատնեսցի քաղաքս ի ձեռս Քաղդէացւոց,
եւ այրեսցեն զդա հրով, եւ դու ոչ ապ-
19 րեսցիս ի ձեռաց նոցա։ Եւ ասէ Սե-
դեկիա արքայ ցԵրեմիա, [2]Իմ բանք ինչ
են ընդ Հրէայսն փախստականս" առ
Քաղդէացիսն, գուցէ տայցեն զիս ի ձեռս
20 նոցա, եւ ձաղիցեն զիս։ Եւ ասէ Երե-
միա, Ոչ մատնեսցեն զքեզ. բայց լուր
զբանս Տեառն զոր ես խօսիմ ընդ քեզ,
եւ լաւ լիցի քեզ եւ կեցցէ անձն քո։
21 Ապա թէ ոչ կամիցիս ելանել, այս բան
22 է զոր եցոյց ինձ Տէր. Ահաւասիկ ա-
մենայն կանայք որ մնացեալ են ի տան
թագաւորին Յուդայ, հանիցեն առ իշ-
խանս արքային Բաբելացւոց. եւ նոքա
ասիցեն, Խաբեցին զքեզ եւ յաղթեցին
քեզ արք խաղաղարարք, [3]եւ արկցեն
ի գայթակղութիւն զոտս քո, եւ դարձ-
23 ցին ի քէն"։ Եւ զամենայն կանայս քո
եւ զորդիս քո հանցեն առ Քաղդէա-
ցիսն, եւ դու ոչ ապրեսցիս ի ձեռաց
նորա. զի ի ձեռս թագաւորին Բաբե-
լացւոց ըմբռնեսցիս, եւ քաղաքս այ-
24 րեսցի հրով։ Եւ ասէ ցնա թագաւորն,
[4]Այր դու", մի՛ ոք իմասցի ինչ ի բանից
25 այտի յայտցանէ, [5]գուցէ մեռանիցիս։ Եւ
եթէ լսիցեն իշխանքն եթէ խօսեցայ
ընդ քեզ, եւ գայցեն առ քեզ եւ ասի-
ցեն, Պատմեա մեզ, զի՞նչ խօսեցար ընդ
արքային, մի՛ թաքուցաներ ի մէնջ եւ
ոչ սպանցուք զքեզ. եւ կամ թէ զի՞նչ
26 խօսեցաւ ընդ քեզ արքայ. Ասասցես
ցնոսա, Արկի գութս առաջի արքային զի
մի՛ դարձուսցէ զիս անդրէն ի տուն Յով-
27 նաթանայ մեռանել ինձ անդ։ Եւ եկին
ամենայն իշխանքն առ Երեմիա, եւ հար-
ցին ցնա. եւ պատմեաց նոցա զամե-
նայն բանսն զոր պատուիրեաց նմա թա-
գաւորն, եւ լռեցին ի նմանէ զի ոչ ել
28 ի վեր բանն։ Եւ նստաւ Երեմիա [6]ի
սրահի բանտին, մինչեւ ի ժամանակն
յորում առաւ Երուսաղէմ։

## ԳԼ. ԼԹ

1 Եւ եղեւ յորժամ առաւ Երուսաղէմ
յամին իններորդի Սեդեկեայ արքայի
Յուդայ յամսեանն տասներորդի, եկն
եհաս Նաբուքոդոնոսոր արքայ Բաբե-
լացւոց, ինքն եւ ամենայն զօրք իւր
2 յԵրուսաղէմ, եւ պաշարեցին զնա։ Եւ
յամին մետասաներորդի Սեդեկեայ՝ յամ-
սեանն չորրորդի՝ որ օր իննն էր ամսոյն,
3 պատառեցաւ [7]քաղաքն. Եւ մտին ա-
մենայն զօրավարք" արքային Բաբելաց-
ւոց, եւ նստան ի դրանն միջնում, Ներ-
գել Սարասար, [8]Սամագաթա, Նաբու
Սարսեքիմ, Ռափսարիս, Ներգել Սա-
րասար, Ռաբմագ", եւ ամենայն այլ
եւս իշխանք արքային Բաբելացւոց։
4 Եւ եղեւ իբրեւ ետես զնոսա Սեդե-
կիա արքայ Յուդայ, եւ ամենայն արք
պատերազմօղք, փախեան եւ ելին գի-
շերի ի քաղաքէ անտի ընդ ճանապարհ
բուրաստանին արքունի, ընդ դուռնն
որ էր ի մէջ [9]պարսպացն. եւ ելին ընդ
5 ճանապարհ [10]Արաբայ։ Եւ զհետ եղեն
նոցա զօրք Քաղդէացւոցն, եւ հասին
Սեդեկեայ [11]յԱրաբովթ Երիքովայ, կա-
լան զնա եւ ածին առ Նաբուքոդոնո-
սոր արքայ Բաբելացւոց ի Ռեբղաթա
յերկրին Եմաթայ, եւ խօսեցաւ ընդ նմա
6 դատաստանօք։ Եւ սպան արքայն Բա-
բելացւոց զորդիսն Սեդեկեայ ի Ռեբ-
ղաթա առաջի նորա. եւ զամենայն ա-
զատսն Յուդայ կոտորեաց արքայն Բա-
7 բելացւոց։ Եւ զաչսն Սեդեկեայ կու-
րացոյց, եւ կապեաց զնա պղնձի շղթա-

[1] Եբր. իշխանս [2] Եբր. Ես երկնչիմ ի Հրէից որ անկեալ են [3] Եբր. իբրեւ ընկղմեցան ոտք քո ի տիղմ, դարձան յետս [4] Յեբր. գոլասե [5] Եբր. եւ մի՛

[6] Եբր. ի դուռնի [7] Իմն, պարիսպ քաղաքին. (3) Եւ մտին ամենայն իշխանք [8] Ըստ Եբրայեցին, Սամեգարնաբու, Սարսեքիմ, Ռաբսարիս, Ներգեղշարասար, Ռաբմագ (մոգպետ) [9] Եբր. երկուց պարսպացն [10] Այլօրինակն՝ դաշտին [11] Այլօրինակն՝ ի դաշտան

8 յրւք տանել զնա ի Բաբելոն։ Եւ զտունն
թագաւորին եւ զտունս ժողովրդեանն
այրեցին Քաղդէացիքն հրով, եւ զպա-
9 րիսպն Երուսաղեմի քակեցին։ Եւ զմնա-
ցորդս ժողովրդեանն որ մնացին ի քա-
ղաքին, եւ զանկեալսն որ անկան ի
նա, եւ զմնլքորսն ժողովրդեանն որ
մնացին, խաղացոյց Նաբուզարդան դահ-
10 ճապետ ի Բաբելոն։ Եւ յաղքատաց ժո-
ղովրդեանն, որոց ոչ ինչ գոյր, եթող
Նաբուզարդան դահճապետ անդրէն յերկ-
րին Յուդայ, եւ ետ նոցա այգիս եւ
ջրարբիս յաւուր յայնմիկ։
11 Եւ ետ պատուիրանս Նաբուքոդո-
նոսոր արքայ Բաբելացւոց զԵրեմիա ի
ձեռն Նաբուզարդանայ դահճապետին
12 եւ ասէ, Առ զդա եւ ակն ած ի վերայ
դորա, եւ մի ինչ արասցես դմա չար.
այլ զոր ինչ ասասցէ քեզ՝ արասցես
13 դմա։ Եւ առաքեցին Նաբուզարդան
դահճապետ եւ Նաբուսազարան Ներքի-
նապետ, եւ Ներգեղսարասար, Ռաբ-
մագ, եւ ամենայն մեծամեծք արքային
14 Բաբելացւոց, Եւ առին զԵրեմիա ի
բանտէ անտի, եւ ետուն զԳոդողիա
որդի Աքիկամայ՝ որդւոյ Սափանայ, [1]եւ
հանին" զնա ի տունն, եւ անդ նստէր
ի մէջ ժողովրդեանն։
15 Եւ առ Երեմիա եղեւ բան Տեառն
մինչ էր ի նեղութեանն [2]ի սրահի բան-
16 տին, եւ ասէ, Երթ եւ ասա զԱբդեմելէք
Եթէովպացի, Այսպէս ասէ Տէր զօրու-
թեանց՝ Աստուած Իսրայելի. Ահաւասիկ
ածեմ ես զբանս իմ ի վերայ քաղաքիդ
այդորիկ ի չարիս եւ ոչ ի բարիս. եւ ե-
ղիցի առաջի աչաց քոց յաւուր յայն-
17 միկ։ Եւ զքեզ փրկեցից յաւուր յայն-
միկ, ասէ Տէր, եւ ոչ տաց զքեզ ի ձեռս
արանցն յորոց դու երկնչիս յերեսաց
18 նոցա։ Զի ապրեցուցանելով ապրեցու-
ցից զքեզ, եւ ի սուր մի անկցիս, եւ
եղիցի քեզ անձն քո ի գիւտ. զի յու-
սացար յիս, ասէ Տէր։

Գլ. Խ

1 Բանն որ եղեւ ի վերայ Երեմիայի ի
Տեառնէ՝ յետ արձակելոյն զնա Նաբու-
զարդանայ դահճապետի ի Ռամա. քան-
զի առին զնա կապեալ ձեռնակապօք ի
միջոյ ամենայն գերութեանն Երուսա-
ղեմի եւ Յուդայ, զոր խաղացուցին ի
2 Բաբելոն։ Առ զնա դահճապետն, եւ ասէ
ցնա, Տէր Աստուած քո բարբառեցաւ
զչարիսդ զայդ ի վերայ տեղւոյս այսո-
3 րիկ. Եւ ած եւ արար Տէր որպէս եւ
խօսեցաւ. զի մեղայք Տեառն եւ ոչ
լուայք ձայնի նորա, եւ եղեւ ընդ ձեզ
4 բանդ այդ։ Եւ արդ ահա այժմ լուծի
զքեզ այսօր ի ձեռակապացդ որ էին ի
ձեռս քո. եթէ բարւոք թուի առաջի
քո գալ ընդ իս ի Բաբելոն՝ եկ, եւ ածից
ի վերայ քո ակն. եւ եթէ չար թուի
յաչս քո գալ ընդ իս ի Բաբելոն, դա-
դարեա աստէն. ահա ամենայն երկիրս
առաջի քո է ի բարիս, ուր հաճոյ է քեզ
5 երթալ՝ անդր երթիցես։ Եւ [3]մինչդեռ
աստ եմ, երթ յոր եւ կամիս. եւ" դար-
ձիր առ Գոդողիա որդի Աքիկամայ որդ-
ւոյ Սափանայ, զոր կացոյց արքայն
Բաբելացւոց ի վերայ [4]երկրին Հրէաս-
տանի, եւ բնակեսցես ընդ նմա ի մէջ
ժողովրդեանն. ապա թէ ոչ, ըստ ա-
մենայն հաճութեան աչաց քոց երթա-
լոյ՝ երթիցես. եւ ետ նմա դահճապետն
նպարակս եւ պարգեւս, եւ արձակեաց։
6 Եւ եկն Երեմիա առ Գոդողիա որդի Ա-
քիկամայ ի Մասփա, եւ նստաւ անդ
ի մէջ ժողովրդեան երկրին մնացելոյ։
7 Եւ լուան ամենայն զօրավարք զօրաց
որ էին ի դաշտի՝ ինքեանք եւ զօրք ի-
րեանց, թէ կացոյց արքայն Բաբելաց-
ւոց զԳոդողիա որդի Աքիկամայ ի վե-
րայ երկրին, եւ յանձն արար նմա զարս
եւ զկանայս եւ [5]ժողովուրդ բազում"
եւ յաղքատաց ժողովրդեան երկրին զորս
8 ոչ խաղացոյց ի Բաբելոն։ Եկին առ
Գոդողիա ի Մասփա, Իսմայէլ որդի
Նաթանեայ եւ Յովնան եւ Յովնաթան
որդիք Կարէի, եւ Սարեա որդի Թանա-
թեմայ, եւ որդիք Ովփերի որդւոյ Նե-
տոփատայ, եւ Յեզոնիա որդի Մաքա-
թայ, ինքեանք եւ արք որ ընդ նոսա։
9 Եւ երդուաւ նոցա Գոդողիա որդի Ա-
քիկամայ որդւոյ Սափանայ, եւ արանցն
որ ընդ նոսա, եւ ասէ, Մի երկնչիք
[6]յերեսաց ծառայիցն" Քաղդէացւոց, այլ
բնակեցէք յերկրիս, եւ հարկեցարուք
արքային Բաբելացւոց, եւ բարի եղիցի
10 ձեզ։ Եւ ես ահաւասիկ նստիմ ի Մաս-

[1]Եբր. հանել [2]Եբր. ի գաւթի [3]Եբր. մինչչեւ դարձեալ նորա այսրէն, [4]Եբր. քաղաքացդ [5]Եբր. զմանկունս [6]Եբր. ի ծառայութենէ

վա, կալ ընդդէմ Քաղդէացւոցն որ ե-
կեալ իցեն ի վերայ մեր. եւ դուք ժողո-
վեցէք զգինի եւ զմիրգ, եւ ժողովեցէք եւղ
[1]յամանս ձեր. եւ բնակեցէք ի քաղաքս
11 ձեր զորս կալայք [2]քաջութեամբ։ Եւ
ամենայն Հրեայք որ էին յերկրին Մո-
վաբացւոց, եւ ի մէջ որդւոցն Ամո-
նայ, եւ որք յԻդումէ, եւ որք յամենայն
երկրի, լուան եթէ թող արքայն Բա-
բելացւոց մնացորդս ի Հրէաստանի, եւ
կացոյց նոցա վերակացու զԳոդողիա
որդի Աքիկամայ որդւոյ Սափանայ,
12 Դարձան անդրէն ամենայն Հրեայք յա-
մենայն տեղեաց ուր ցրուեցան անդր,
եւ եկին յերկիրն Յուդայ առ Գոդողիա
ի Մասփա, եւ ժողովեցին զգինի եւ
զմիրգ բազում յոյժ։
13 Եւ Յովնան որդի Կարէի եւ ամենայն
զօրավարք զօրացն որ էին ի բացի՛ ե-
14 կին առ Գոդողիա ի Մասփա, Եւ ա-
սեն ցնա, Զայն գիտիցե՞ս զի Բաաղիս
թագաւոր որդւոցն Ամոնայ արձակեաց
[3]առ Իսմայէլ՛ որդի Նաթանայ սպանա-
նել զքեզ. եւ ոչ հաւատաց նոցա Գո-
15 դողիա որդի Աքիկամայ։ Եւ Յովնան
որդի Կարէի՛ ասէ գաղտ ցԳոդողիա ի
Մասփա, Երթայց սպանից զԻսմայէլ
որդի Նաթանայ, եւ մի՛ ոք գիտասցէ.
գուցէ երբեք սպանանիցէ զքեզ, եւ
ցրուեսցին Հրեայք որ ժողովեալ են առ
քեզ, եւ կորնչիցին մնացորդք Յուդայ։
16 Եւ ասէ Գոդողիա որդի Աքիկամայ ցՅով-
նան որդի Կարէի, Մի՛ արասցես ըստ
բանիդ այդորիկ, զի սուտ խօսեցար դու
զԻսմայելէ։

ԳԼ. ԽԱ.

1 Եւ եղեւ յամսեանն եւթներորդի եկն
Իսմայէլ որդի Նաթանայ, որդւոյ Եղի-
սամայ յազգէ թագաւորին, եւ [4]ծառայք
թագաւորին, եւ տասն այր ընդ նմա
առ Գոդողիա որդի Աքիկամայ ի Մաս-
փա, եւ կերան հաց ի միասին ի Մաս-
2 փա։ Եւ յարեաւ Իսմայէլ որդի Նաթա-
նայ, եւ տասնեքին արքն որ ընդ նմա,
եւ եհար զԳոդողիա որդի Աքիկամայ
որդւոյ Սափանայ սրով, եւ սպան զնա,
զոր կացուցեալ էր արքայն Բաբելաց-
3 ւոց ի վերայ երկրին. Եւ զամենայն
Հրեայսն որ էին ընդ Գոդողեայ ի Մաս-

[1] Եբր· եւ դիք յամանս [2] Յեբր· դօլաւէ [3] Եբր· զԻսմայէլ [4] Եբր· մեծամեծք

փա, եւ զամենայն Քաղդէացիս որ
անդ գտան զարս պատերազմօղս, կո-
տորեաց Իսմայէլ։
4 Եւ եղեւ յերկրորդում աւուր սպանա-
նելոյ անդ զԳոդողիա, եւ ոչ ոք գիտէր,
5 Եկին արք ի Սիւքեմայ եւ ի Սաղեմայ եւ
ի Շամրինէ, արք ութսուն, գերծեալ զմօ-
րուս եւ պատառեալ զհանդերձս [5]կոծե-
լով, եւ մանանա՛ եւ կնդրուկ ի ձեռս նոցա
6 տանել ի տուն Տեառն։ Եւ ել Իսմայէլ
որդի Նաթանայ ընդ առաջ նոցա ի Մաս-
փայ, երթալով երթայր եւ լայր. եւ
եղեւ իբրեւ մերձեցաւ ի նոսա՛ ասէ ցնո-
սա, Մտէք առ Գոդողիա որդի Աքիկա-
7 մայ։ Եւ եղեւ իբրեւ մտին ի մէջ քա-
ղաքին, կոտորեաց զնոսա Իսմայէլ որ-
դի Նաթանայ ի մէջ քաղաքին, եւ ա-
մաց ի ջրհոր՛ ինքն եւ արքն որ ընդ
8 նմա։ Եւ արք տասն գտան անդ, եւ
ասեն ցԻսմայէլ, Մի՛ սպանաներ զմեզ,
զի գոն մեզ գանձք ի բացի, ցորեան եւ
գարի, մեղր եւ եւղ. եւ զանց արար
եւ ոչ սպան զնոսա ի մէջ եղբարց իւ-
9 րեանց։ Եւ ջրհորն յոր ամաց Իսմայէլ
զամենայն մարմինս արանցն զոր կոտո-
րեաց վասն Գոդողեայ, [6]ջրհոր մեծ էր՛
զոր արար արքայ Ասա յերեսաց Բաա-
սայ արքայի Իսրայելի. զայն ելից Իս-
10 մայէլ որդի Նաթանայ վիրաւորօք։ Եւ
դարձոյց Իսմայէլ զամենայն ժողովուրդն
որ մնացեալ էր ի Մասփա, եւ զդստերս
թագաւորին հանդերձ ամենայն սինլքո-
րօք ժողովրդեանն որ էին ի Մասփա,
զորս յանձն արարեալ էր Նաբուզար-
դանայ դահճապետի Գոդողեայ որդւոյ
Աքիկամայ. եւ [7]կանխեաց Իսմայէլ որ-
դի Նաթանայ ընդ առաւօտ՛, եւ գնաց
յայն կոյս առ որդիսն Ամոնայ։
11 Եւ լուաւ Յովնան որդի Կարէի եւ
ամենայն զօրավարք զօրացն որ ընդ նմա
էին, զամենայն չարիսն զոր գործեաց
12 Իսմայէլ որդի Նաթանայ. Ժողովեցին
զամենայն զօրականն իւրեանց, եւ խա-
ղացին երթալ տալ պատերազմ ընդ Իս-
մայելի որդւոյ Նաթանայ. եւ գտին զնա
ի վերայ ջուրցն բազմաց որ էին ի Գա-
13 բաւոն։ Եւ եղեւ իբրեւ տեսին ամե-
նայն ժողովուրդն որ էին ընդ Իսմայե-
լի՛ զՅովնան որդի Կարէի եւ զամենայն

[5] Եբր· եւ ցաւեալ, եւ ընծայ հացի [6] Եբր· էր ջրհորն [7] Եբր· գերեաց զնոսա Իսմայէլ որդի Նաթանայ

զօրավարս զօրացն որ էին ընդ նմա՝ ու-
14 րախ եղեն ։ Եւ դարձան *առ նոսա՝՝ ա-
մենայն ժողովուրդն զոր գերեաց Իս-
մայէլ ի Մասփայ, եւ եկին առ Յովնան
15 որդի Կարէի ։ Բայց Իսմայէլ որդի Նաթա-
նայ ապրեցաւ ութ արամբք յերեսացն
Յովնանայ, եւ անկաւ առ որդիսն Ա-
16 մոնայ ։ Եւ առ Յովնան որդի Կարէի,
եւ ամենայն զօրավարք զօրացն որ էին
ընդ նմա, զամենայն մնացորդս ժո-
ղովրդեանն զորս Թափեաց յԻսմայելէ
յորդւոյ Նաթանայ ի Մասփայ, յետ
սպանանելոյն զԳոդողիա որդի Աքիկա-
մայ զարս հզօրս պատերազմօղս, եւ
զկանայս եւ [1]զարս եւ զներքինիս, զոր
17 առ յերկրէն Գաբաւոնացւոց, Եւ [2]գնաց.
եւ նստան յերկրին Բերութքամամայ՝՝
հանդէպ Բեթղեհեմի, երթալ մտանել
18 յերկիրն Եգիպտացւոց՝ յերեսաց Քաղ-
դէացւոցն, քանզի զանգի հոգան յերե-
սաց նոցա. զի սպան Իսմայէլ զԳոդո-
ղիա որդի Աքիկամայ, զոր կացոյց ար-
քայն Բաբելացւոց ի վերայ երկրին ։

## ԳԼ. ԽԲ

1 Եւ մատեան ամենայն զօրավարք զօ-
րացն, եւ Յովնան որդի Կարէի, եւ Յե-
զոնիա որդի Ովսէի, եւ ամենայն ժո-
ղովուրդն ի փոքուէ մինչեւ ցմեծամեծս,
2 Եւ ասեն ցԵրեմիա մարգարէ, Անկցի
գութ մեր առաջի երեսաց քոց, եւ կաց
յաղօթս վասն մեր առ Տէր Աստուած
քո վասն մնացորդացս այսոցիկ. զի
մնացաք սակաւք ի բազմաց, որպէս քո
3 աչք տեսանեն զմեզ. Եւ պատմեսցէ
մեզ Տէր Աստուած քո զճանապարհ ընդ
որ գնասցուք, եւ զբանն զոր արաս-
4 ցուք ։ Եւ ասէ ցնոսա Երեմիա մարգա-
րէ, Լուայ. աւասիկ ես կացից յաղօթս
առ Տէր Աստուած ձեր վասն բանից ձե-
րոց, եւ եղիցի զոր ինչ բան պատաս-
խանի տացէ Տէր՝ պատմեցից ձեզ. եւ
5 ոչ թաքուցից ի ձէնջ բան մի ։ Եւ նո-
քա ասեն ցԵրեմիա, Եղիցի մեզ Տէր ի
վկայ արդար եւ հաւատարիմ, եթէ ոչ
ըստ ամենայն բանի զոր առաքեսցէ
զքեզ Տէր Աստուած քո առ մեզ՝ այն-
6 պէս արասցուք, Եթէ՛ բարի եւ եթէ՛
չար, ձայնի Տեառն Աստուծոյ մերում
առ որ առաքեմք զքեզ՝ լուիցուք, զի
բարի եղիցի մեզ, [3]եւ լուիցուք ձայնի
Տեառն Աստուծոյ մերոյ ։
7 Եւ եղեւ յետ աւուրց տասանց, ե-
8 ղեւ բան Տեառն առ Երեմիա. Եւ կո-
չեաց զՅովնան որդի Կարէի, եւ զամե-
նայն զօրավարս զօրացն որ էին ընդ
նմա, եւ զամենայն ժողովուրդն ի փո-
9 քուէ մինչեւ ցմեծամեծսն, Եւ ասէ
ցնոսա, Այսպէս ասէ Տէր Աստուած Իս-
րայելի, առ որ առաքեցէքն զիս արկա-
10 նել զութս առաջի նորա. Եթէ նստե-
լով նստիցիք յերկրիս յայսմիկ, շինեցից
զձեզ եւ ոչ քակեցից, տնկեցից զձեզ
եւ ոչ խլեցից, զի մեղմացեալ եմ ի չա-
11 րեաց զոր արարի առնել ձեզ ։ Մի՛ երկն-
չիք յերեսաց արքային Բաբելացւոց
յորմէ զարհուրեալ էիք յերեսաց նորա.
մի՛ երկնչիք ի նմանէ, ասէ Տէր. զի
ընդ ձեզ եմ ես ի փրկել զձեզ, եւ ապ-
12 րեցուցանել ի ձեռաց նորա. Եւ արկից
զձեւ ք գութ, եւ [4]ողորմեցայց ձեզ, եւ
13 դարձուցից՝՝ զձեզ յերկիր ձեր ։ Եւ եթէ
ասիցէք, Ոչ նստցուք յերկրիս յայսմիկ,
եւ ոչ լուիցուք ձայնի Տեառն Աստու-
14 ծոյ մերոյ, Այլ երթիցուք յերկիրն Ե-
գիպտացւոց, [5]եւ ոչ տեսցուք պատե-
րազմ, եւ զձայն փողոյ ոչ լուիցուք,
եւ հացի ոչ քաղցիցուք, եւ անդ բնա-
15 կեսցուք. Եւ արդ վասն այդորիկ լուա-
րուք զպատգամս Տեառն, մնացորդք
Հրէաստանի ։ Այսպէս ասէ Տէր զօրու-
թեանց՝ Աստուած Իսրայելի. Եթէ դուք
տալով տայցէք զերեսս ձեր մտանել յԵ-
16 գիպտոս եւ անդ բնակել, Եւ եղիցի
սուրն յորմէ երկնչէիք՝ անդ գտցէ զձեզ
յերկրին Եգիպտացւոց, եւ սովն յորմէ
կասկածէիք՝ անդ հասցէ ձեզ յերկրին
17 Եգիպտացւոց, եւ անդ մեռանիցիք ։ Եւ
եղիցի ամենայն արք որք դէմ եդին մտա-
նել յերկիրն յԵգիպտացւոց բնակել անդ,
սրով եւ սովով եւ մահուամբ սատա-
կեսցին, եւ ոչ ոք եղիցի ի նոցանէ ապ-
րեալ ի չարեացն զոր ես ածից ի վերայ
18 նոցա ։ Զի այսպէս ասէ Տէր զօրութեանց՝
Աստուած Իսրայելի. Որպէս կաթեաց
սրտմտութիւն բարկութեան իմոյ ի վե-
րայ բնակչաց Երուսաղեմի, նոյնպէս
կաթեսցէ սրտմտութիւն իմ ի վերայ
ձեր ի մտանելն ձեր յԵգիպտոս. եւ ե-
ղիջիք [6]յանապատ եւ վտարանդիք՝՝ եւ

* Ոմն. գ[illegible]    [1] Ոմն. զմանկունս    [2] Ոմն. գնացին և նստան ի վանս Բիմհամայ

[3] Ոմն. եթէ    [4] Ոմն. ողորմեցայ ձեզ. և դարձուցէ    [5] Ոմն. ուր    [6] Ոմն. ի գարշանս եւ ի զարմանս

ի Նզովս եւ ի Նախատինս, եւ մի՛ եւս
19 տեսանիցէք զտեղիս զայս, [1]Զարմէ խօ-
սեցաւ Տէր ի վերայ ձեր, եւ ի վերայ
մնացորդացն Յուդայ՝ թէ Մի՛ մտանի-
ցէք յԵգիպտոս. բայց այժմ՝՝ գիտելով
գիտասջիք, քանզի վկայութիւն դնեմ
20 ձեզ այսօր։ Զի չարիս գործեցէք յան-
ձինս ձեր, զի առաքեցէք զիս առ Տէր
Աստուած ձեր, եւ ասացէք, Յաղօթս
կաց վասն մեր առ Տէր Աստուած մեր,
եւ ըստ ամենայնի զոր ինչ խօսեսցի
ընդ քեզ Տէր Աստուած մեր, նոյնպէս
21 պատմեա մեզ, եւ արասցուք։ Եւ պատ-
մեցի ձեզ այսօր, եւ ոչ լուարուք ձայ-
նի Տեառն Աստուծոյ ձերոյ, զոր առա-
22 քեաց առ ձեզ։ Եւ արդ գիտասջիք,
եթէ սրով եւ սովով եւ մահուամբ սա-
տակեսջիք ի տեղւոջն յորում դուք կա-
միք մտանել բնակել անդ։

Գլ. ԽԳ

1 Եւ եղեւ իբրեւ դադարեաց Երեմիա ի
խօսելոյ ընդ ամենայն ժողովրդեանն զա-
մենայն բանս Տեառն Աստուծոյ նոցա,
զորս առաքեաց Տէր Աստուած նոցա առ
2 [2]նոսա, Եւ ասեն Յեզոնիա որդի Ով-
սէի, եւ Յովնան որդի Կարէի, եւ ա-
մենայն արք ամբարտաւանք՝ զԵրեմիա,
Սուտ խօսիս դու, ոչ առաքեաց զքեզ
Տէր Աստուած մեր առ մեզ՝ ասել, թէ
Մի՛ մտանէք յԵգիպտոս բնակել անդ.
3 Այլ Բարուք որդի Ներեայ գրգռէ զքեզ
ընդ մեզ, զի տացես զմեզ ի ձեռս Քաղ-
դէացւոց կոտորել եւ տանել զմեզ գերի
4 ի Բաբելոն։ Եւ ոչ լուաւ Յովնան որդի
Կարէի եւ ամենայն զօրավարք զօրացն
եւ ամենայն ժողովուրդն ձայնի Տեառն՝
5 բնակել յերկրին Յուդայ։ Եւ առ Յով-
նան որդի Կարէի եւ ամենայն զօրա-
վարք զօրացն զամենայն մնացորդս Յու-
դայ որ դարձեալ էին յամենայն ազգաց
ուր ցրուեալ էին անդր, բնակել յերկ-
6 րին Յուդայ, Զարս եւ զկանայս եւ
զմանկտի, եւ զդստերս թագաւորին,
եւ զանձինս որ մնացեալ էին ի Նաբու-
զարդանայ դահճապետէ առ Գոդողեայ
որդւոյ Աքիկամայ որդւոյ Սափանայ, եւ
զԵրեմիա մարգարէ եւ զԲարուք որդի
7 Ներեայ, Եւ գնացին յերկիրն Եգիպ-
տացւոց, վասն չլսելոյ ձայնի Տեառն.
եւ չոգան ի Տափնաս։
8 Եւ եղեւ բան Տեառն առ Երեմիա ի
9 Տափնաս, եւ ասէ, Ա՛ռ դու քեզ քա-
րինս մեծամեծս, եւ թաղեա զնոսա
[3]յապխտագրանն թաքստեան՝՝, ի մուտս
ապարանիցն Փարաւոնի ի Տափնաս ա-
10 ռաջի արանցդ Յուդայ, Եւ ասասցես
ցնոսա, Այսպէս ասէ Տէր զօրութեանց՝
Աստուած Իսրայէլի. Ահաւասիկ ես ա-
ռաքեմ եւ ածեմ զՆաբուքոդոնոսոր ար-
քայ Բաբելացւոց զծառայ իմ, եւ [4]արկ-
ցէ զաթոռ իւր՝՝ ի վերայ քարանցդ այ-
դոցիկ զորս ծածկեցի. եւ [5]առցէ զզէն
11 իւր զինքեամբ՝՝ ի վերայ դոցա. Եւ
մտցէ հարցէ զերկիրդ Եգիպտացւոց,
զոր ի մահ՝ ի մահ, եւ զոր ի գերութիւն՝
ի գերութիւն, եւ զոր ի սուր՝ ի սուր։
12 Եւ [6]արկցէ հուր ի տունս աստուածոց
նոցա եւ այրեսցէ զնոսա, եւ տարցի
զգերի. եւ [7]որոնեսցէ զերկիրդ Եգիպ-
տացւոց՝ որպէս [8]որոնէ հովիւ զհանդերձս
իւր. եւ ելցէ այտի խաղաղութեամբ։
13 Եւ խորտակեսցէ զսիւնս Արեգ քաղա-
քի որ է յերկրին Եգիպտացւոց, եւ զմե-
հեանս զկից նոցա այրեսցէ հրով։

Գլ. ԽԴ

1 Բանն Տեառն որ եղեւ առ Երեմիա ի
վերայ ամենայն Հրէիցն որ բնակեալ
էին յերկրին Եգիպտացւոց, եւ որք
նստէին ի Մագդոլ եւ ի Տափնաս եւ
ի Մեմփիս եւ յերկրին Պաթուրէս, եւ
2 ասէ, Այսպէս ասէ Տէր զօրութեանց՝
Աստուած Իսրայէլի. Դուք ինքնին իսկ
տեսէք զամենայն չարիս զոր ածի ի վե-
րայ Երուսաղեմի, եւ ի վերայ ամենայն
քաղաքացն Հրէաստանի, եւ ահա կան
3 աւերակ այսօր ի բնակչաց, Յերեսաց
չարեաց իւրեանց զոր արարին ի դառ-
նացուցանել զիս. զի գնացին խունկս
արկանել եւ պաշտել զաստուածս օ-
տարս, զորս ոչ [9]գիտէիք դուք եւ՝՝ հարքն
4 ձեր։ Եւ առաքեցի առ ձեզ զամենայն
ծառայս իմ զմարգարէս ընդ առաւօտս
առաւօտս, եւ ասէի, Մի՛ գործէք զիրս
5 պղծութեանց այգորիկ զոր ատեցի։ Եւ
ոչ լուան ինձ, եւ ոչ խոնարհեցուցին

[1]Եբր. Խօսեցաւ Տէր ի վերայ ձեր, մնացորդք Յուդայ, „Մի՛ մտանիցէք յԵգիպտոս. [2]Եբր. նոսա, զամենայն բանս զայսոսիկ

[3]Եբր. յաղիւսատանն ի կաւի [4]Եբր. արկից զաթոռ նորա [5]Եբր. Հարցէ զխորան իւր զարքունի [6]Եբր. արկից [7]Եբր. ագանիցի [8]Եբր. ագանի [9]Եբր. գիտէին նոքա, ոչ դուք և ոչ

զունկն իւրեանց դառնալ ի չարեաց
իւրեանց, չարկանել խունկս աստուա-
6 ծոց օտարաց։ Եւ կաթեաց բարկու-
թիւն սրտմտութեան իմոյ, եւ բորբո-
քեցաւ [1]ի դրունս Յուդայ եւ արտաքոյ"
Երուսաղեմի, եւ եղեն յաւեր եւ յանա-
7 պատ որպէս եւ այսօր։ Եւ արդ այսպէս
ասէ Տէր Սաբաւովթ՝ Աստուած Իսրա-
յէլի. Ընդէ՞ր առնէք դուք չարիս մե-
ծամեծս յանձինս ձեր, սատակել զձեր
զայր եւ զկին եւ զմանուկ ստնդիաց ի
միջոյ Յուդայ, առ ի չմնալոյ ումեք ի
8 ձէնջ՝ Դառնացուցանել զիս գործովք
ձեռաց ձերոց, արկանել խունկս աս-
տուածոց օտարաց յերկրիդ Եգիպտաց-
ւոց, յոր դուք մտէք բնակել այդր. զի
սատակիցիք եւ լինիցիք յանէծս եւ ի
նախատինս ընդ ամենայն ազգս երկ-
9 րի. [2]Առ ի չմոռանալոյ ձեզ" զչարիս
հարցն ձերոց, եւ զչարիս թագաւորացն
Յուդայ, եւ զչարիս կանանց նոցա, եւ
զչարիս ձեր, եւ զչարիս կանանց ձե-
րոց, զոր արարին յերկրին Յուդայ եւ
10 [3]արտաքոյ Երուսաղեմի։ Եւ ոչ դադա-
րեցին մինչեւ ցայսօր, եւ ոչ երկեան,
եւ ոչ կալան յօրէնս իմ եւ ի հրամանս
զոր ետու առաջի երեսաց ձերոց, եւ
11 առաջի երեսաց հարցն ձերոց։ Վասն
այնորիկ այսպէս ասէ Տէր զօրութեանց՝
Աստուած Իսրայէլի. Ահաւասիկ ես հաս-
տատեմ զերեսս իմ ի վերայ ձեր ի չա-
12 րիս, սատակել զամենայն զՅուդա։ Եւ
[4]առցեն զմնացորդս Յուդայ որ դէմ եդին
մտանել յերկիրս Եգիպտացւոց բնակել
անդ, [5]կորուսանել զամենայն մնացորդս
որ են յԵգիպտոս", եւ անկցին ի սուր, եւ
սատակեսցին սովով, ի փոքուէ մինչեւ
ցմեծամեծս սրով եւ սովով մեռանի-
ցին, եւ եղիցին ի նզովս եւ ի կորուստ
13 եւ յանէծս եւ ի նախատինս։ Եւ այց
արարից ի վերայ նոցա որ նստին յերկ-
րիդ Եգիպտացւոց, որպէս արարի այց
Երուսաղեմի սրով եւ սովով եւ մա-
14 հուամբ։ Եւ ոչ ոք ապրեսցի ի մնացոր-
դացդ Յուդայ, որ բնակեալ են յերկրիդ
Եգիպտացւոց՝ դառնալ յերկիրն Յուդայ
ուր ակն ունէին յանձինս իւրեանց
դառնալ բնակել անդ. եւ մի՛ դարձցին,
բայց միայն ապրեալքն։
15 Եւ պատասխանի ետուն Երեմիայի
ամենայն արք որք գիտէին թէ արկա-
նեն խունկս կանայք իւրեանց աստուա-
ծոց օտարաց, եւ ամենայն կանայք որք
կային անդ ժողովք մեծամեծք, եւ
ամենայն ժողովուրդն որ բնակեալն էին
յերկրին Եգիպտացւոց ի Պաթուրէս, եւ
16 ասեն, Բանիդ զոր խօսեցար առ մեզ
17 յանուն Տեառն՝ ոչ լուիցուք. Զի առնե-
լով արասցուք զամենայն բան որ ելանէ
ի բերանոյ մերմէ, արկանել խունկս
տիկնոջն երկնից եւ նուիրել նմա
նուէրս, որպէս արարաք մեք եւ հարքն
մեր եւ թագաւորքն մեր եւ իշխանքն
մեր՝ ի քաղաքս Յուդայ եւ [3]արտաքոյ
Երուսաղեմի, եւ էաք հացալիցք եւ
փափկացեալք, եւ չար ինչ ոչ տեսա-
18 նէաք։ Եւ իբրեւ դադարեցաք յարկա-
նելոյ խունկս տիկնոջն երկնից եւ նուի-
րելոյ նմա նուէրս, նուազեցաք յամե-
նայնէ, եւ սրով եւ սովով սատակե-
19 ցաք։ Եւ զի մեք արկաք խունկս տիկ-
նոջն երկնից, եւ նուիրեցաք նմա
նուէրս, միթէ առանց արանց մերոց ա-
րարաք նմա հասարակս եւ կարկանդակս,
եւ նուիրեցաք նմա նուէրս։
20 Եւ պատասխանի Երեմիա ամենայն
զօրաւորաց ժողովրդեանն հանդերձ
կանամբքն, եւ ամենայն ժողովրդեանն
որ ետուն նմա զայն բանս պատասխանի,
21 եւ ասէ, Ո՞չ ապաքէն զխունկսն զոր
արկանէիք ի քաղաքսն Յուդայ եւ [3]ար-
տաքոյ Երուսաղեմի դուք եւ հարք ձեր
եւ թագաւորքն ձեր եւ իշխանքն ձեր
եւ ժողովուրդ երկրին, յիշեաց Տէր, եւ
22 անկաւ ի սիրտ նորա։ Եւ ոչ կարաց
Տէր համբերել յերեսաց չարեաց իրաց
ձերոց, եւ գարշելեացն զոր առնէիք.
եւ եղեւ երկիրն ձեր յաւերակ եւ յա-
նապատ եւ ի նզովս առ ի չգոյէ բնակ-
23 չաց որպէս այսօր. Յերեսաց զոցա որոց
խունկս արկանէքդ եւ որովք մեղան-
չէք Տեառն, եւ ոչ լուէք ձայնի Տեառն,
եւ ըստ օրինաց նորա եւ ըստ վկայու-
թեանց եւ ըստ հրամանաց նորա ոչ
գնայք. վասն այնորիկ գտին զձեզ չա-
րիքդ այդոքիկ որպէս եւ այսօր։
24 Եւ ասէ Երեմիա ցամենայն ժողովուրդն
եւ ցամենայն կանայսն, Լուարուք զպատ-
գամս Տեառն ամենայն Յուդա որ էք

[1] Եբր. ի քաղաքս Յուդայ և ի հրապարակս [2] Եբր. Միթէ մոռացարո՞ւք [3] Եբր. ի հրապարակս [4] Եբր. առից [5] Եբր. եւ սատակեսցին ամենեքին յերկրին Եգիպտացւոց

25 յերկրիս Եգիպտացւոց. Այսպէս ասէ
Տէր զօրութեանց Աստուած Իսրայելի.
Դուք եւ կանայք ձեր խօսեցայք բե-
րանովք ձերովք, եւ ձեռօք ձերովք
վճարեցէք. ասէք, Անսխալ արասցուք
զզաւանութիւնն մեր զոր զաւանեցաք՝
արկանել խունկս արեգական երկնից, եւ
նուիրել նուէրս. եւ կալով կացէք ի
զաւանութեանն ձերում, եւ անսխալ
26 արարէք զուխտն ձեր: Վասն այսորիկ
լուարուք զպատգամ Տեառն ամենայն
Յուդա որ բնակեալդ էք յերկրիդ Եգիպ-
տացւոց. Ահաւասիկ երդուայ յանուն
իմ մեծ, ասէ Տէր [1]Աստուած, եթէ կո-
չեսցի եւս անուն իմ ի բերանոյ ամե-
նայն առն Յուդայ, ասել թէ կենդանի
է [2]Տէր, յամենայն երկրիս Եգիպտացւոց:
27 Զի ահաւասիկ ես զարթուցեալ եմ ի
վերայ դոցա չարչարել զդոսա, եւ ոչ
առնել բարի. եւ սատակեսցին ամենայն
արք Յուդայ որ բնակեալ են յերկրիդ
Եգիպտացւոց սրով եւ սովով, մինչեւ
28 նուազեսցին. Եւ ապրեալքն ի սրոյ՝
դարձցին յերկրէս Եգիպտացւոց յերկիրն
Յուդայ՝ արք սակաւք թուով. եւ ծա-
նիցեն ամենայն մնացորդքն Յուդայ որ
բնակեալ են յերկրիդ Եգիպտացւոց, թէ
29 ո՛յր բան կայ, իմ թէ նոցա: Եւ այս
ձեզ նշանակ, ասէ Տէր, եթէ այարից
ձեզ այց ի տեղւոջդ յայդմիկ. զի գի-
տասջիք եթէ կալով կայցեն բանք իմ
30 ի վերայ ձեր ի չարիս: Այսպէս ասէ
Տէր. Ահաւասիկ ես տաց զՓարաւոն
Վափրէ արքայ Եգիպտացւոց ի ձեռս
թշնամեաց իւրոց, եւ ի ձեռս խնդրողաց
անձին իւրոյ. որպէս ետու զՍեդեկիա
[3]արքայ ի ձեռս Նաբուքոդոնոսորայ ար-
քայի Բաբելացւոց թշնամւոյ իւրոյ, եւ
խնդրողի անձին նորա:

Գլ. ԽԵ

1 Բանն զոր խօսեցաւ Երեմիա մարգարէ
առ Բարուք որդի Ներեայ, յորժամ
գրեաց զբանսս զայսոսիկ ի մատենի ի
բերանոյ Երեմիայի, յամին չորրորդի
Յովակիմայ որդւոյ Յովսեայ արքայի
2 Յուդայ. Այսպէս ասէ Տէր Աստուած
3 Իսրայելի ի վերայ քո, Բարուք. Որ ա-
սացեր թէ Վա՛յ ինձ, վա՛յ ինձ, զի յաւել
Տէր աշխատութիւն ի վերայ ցաւոց ի-
մոց. [4]ննջեցի հեծութեամբք, եւ հան-
4 գիստ ոչ գտի: Այսպէս ասասցես դմա,
այսպէս ասէ Տէր. Ահա զոր ես շինեցի,
ես լնձէն քակեցից. եւ զոր ես տնկեցի,
ես լնձէն խլեցից՝ զամենայն զերկիրն
5 զայն: Եւ դու խնդրես քեզ մեծամե՞ծս.
մի՛ խնդրեր. զի ահա ես ածից չարիս
ի վերայ ամենայն մարմնոյ, ասէ Տէր,
եւ տաց քեզ զանձն քո ի գիւտ յամե-
նայն տեղւոջ ուր եւ երթայցես անդր:

Գլ. ԽԶ

1 [1]Ի վերայ Եգիպտոսի:" Բանն Տեառն որ
եղեւ առ Երեմիա մարգարէ ի վերայ
2 [5]ամենայն ազգացն, Եգիպտացւոց", ի վե-
րայ զօրացն Փարաւոնի Նեքաւովայ
արքային Եգիպտացւոց, որ էր առ Եփ-
րատ գետով ի Գարքամիս, զոր եհար
Նաբուքոդոնոսոր արքայ Բաբելացւոց,
յամին չորրորդի Յովակիմայ որդւոյ Յով-
սեայ արքայի Հրէաստանի:
3 Առէք [6]զէն եւ վահանս, մատուցէք ի
4 պատերազմ. Կազմեցէք զերիվարս, հե-
ծարուքսպառազէնք, գիք զսաղաւարտս,
առէք յառաջ զգեղարդունս, զգեցարուք
5 զզրահս ձեր: Իսկ այդ զի՞նչ է. զօրաւորքդ
զարհուրեալ իմն են, եւ յետս ընդդէմ
չարժին. զի զօրաւորք նոցա հարան. ի
փախուստ կացին. եւ ոչ [7]դարձցին ի
դոցանէ պատերազմն շուրջանակի", ասէ
6 Տէր: Մի՛ փախիցէ թեթեւն, եւ մի՛ ապ-
րեսցի հզօրն. ի կողմանս հիւսիսոյ առ
Եփրատ գետով տկարացան, կործանե-
7 ցան: Ո՞վ է սա որ իբրեւ զգետ յարու-
ցեալ է, իբրեւ զգետս [8]կուտակեալս
8 ջուր զջուրքք. Ջուրքն Եգիպտացւոց"
իբրեւ զգետ ելանէ, եւ իբրեւ զգետ
խռովլին ջուրք նորա. եւ ասէ, Ելից եւ
ծածկեցից զերկիր, կորուսից զքաղաքն
9 եւ զբնակիչս նորա: [9]Հեծեալք յերի-
վարս, կազմեցէք կառս". ելէք, պատե-
րազմօղք Եթէովպացւոց, եւ Լիբէացիք
վառեալք զինու, եւ Լիւդացիք, ելէք
10 լարեցէք զաղեղունս: Զի օրն այն Տեառն
Աստուծոյ [10]մերոյ՝ օր վրէժխնդրութեան
է, առնուլ վրէժ ի թշնամեաց իւրոց. եւ

[1] Յոմն. զ–ր–ւ–ե [2] Ոմն. Տէր Եհովայ [3] Ոմն. արքայ Յուդայ

[4] Ոմն. աշխատ եղէ [5] Ոմն. ազգաց: (2) Եգիպ-տացւոց [6] Ոմն. ասպար [7] Ոմն. հայեցան յետս. երկեաղ ամենայն ուստեք [8] Ոմն. խռովեցին ջուրք նորա. (8) Եգիպտոս [9] Ոմն. Արիք, երիվարք. զայրացարուք, կառք [10] Ոմն. զօրութեանց

կերիցէ սուր եւ յագեսցի, եւ արբեսցի
յարենէ նոցա. զի զոհ Տեառն զօրու-
թեանց է [1]յերկրէն հիւսիսոյ ի վերայ գե-
11 տոյն Եփրատայ։ Ել ի Գաղաադ, եւ առ
դեղ ռետին՝ [2]կուսի դստերն" Եգիպտաց-
ւոց. ի զուր յաճախեցեր զբժշկութիւնս
12 քո, եւ օգուտ չիք ուստեք քեզ։ Լուան
[3]զգոյժ քո ազգք, եւ աղաղակաւ քով
լի եղեւ երկիր. զի [4]պատերազմող ընդ
պատերազմողի տկարացաւ", եւ անկան
երկոքեան ի միասին։
13 Բանն զոր խօսեցաւ Տէր ի ձեռն Ե-
րեմիայի մարգարէի ի գալ Նաբուքոդո-
նոսորայ արքային Բաբելացւոց, հար-
կանել զերկիրն Եգիպտացւոց։
14 Գոյժ արարէք յԵգիպտոս, եւ հնչե-
ցէք ի Մագդոլ, եւ պատուէր տուք ի
Մեմփիս, [5]ազդ արարէք ի Տափնաս", թէ
Արի եւ պատրաստեաց, զի եկեր սուր
15 [6]զուրս քո։ Ի փախուստ դարձաւ ցուլն
քո ընտիր, ոչ մնաց՝ զի Տէր լքոյց զնա։
16 Եւ բազմութիւնն տկարացաւ, եւ ան-
կաւ" իւրաքանչիւր առ ընկերի իւրում,
եւ ասեն, Արիք եւ դարձցուք առ իւ-
րաքանչիւր ժողովուրդ մեր, եւ յիւրա-
քանչիւր աշխարհ իւր՝ յերեսաց [7]Յունա-
17 կան սրոյն։ Կոչեցէք զանուն Փա-
րաւոնի արքային Եգիպտացւոց՝ Սաւոն
18 եւ Եսբի եւ Մովեդ"։ Կենդանի եմ ես,
ասէ [8]Տէր, որոյ Թագաւոր" զօրու-
թեանց անուն է նորա. զի իբրեւ
զԹաբոր ի լերինս, եւ իբրեւ զԿար-
19 մեղոս ի ծովու եկեսցէ։ Համեստ զգե-
րութեան արա քեզ, բնակեալ դուստր
Եգիպտացւոց. զի Մեմփիս յապական-
նութիւն եղիցի, եւ [9]կոչեսցի նմա վայ"
առ ի չգոյէ բնակչաց նորա։
20 Երինջ զարդարեալ գեղեցիկ՝ Եգիպ-
տոս. [10]ճանճ հասանէ ի հիւսիսոյ՝ եկն ի
21 վերայ նորա", Եւ վարձկանք նորա ի
նմա իբրեւ եզինք պարարակք, զի եւ
նոքա ի փախուստ դարձան առ հասա-
րակ, եւ ոչ հանդարտեցին. զի օր կորս-
տեան եկն ի վերայ նոցա, եւ ժամա-
22 նակ վրէժխնդրութեան։ Ձայն նորա իբ-
րեւ զօձի [11]որ շչիցէ, զի ընդ աւազ
գնայցեն". տապարաւորք եկեսցեն ի վե-
23 րայ նորա իբրեւ զփայտահարս. [12]Հարէք
զանտառս նորա, ասէ Տէր [13]Աստուած,
զորոյ ոչ ոք առնուցու զչափ. զի բազ-
մասցի առաւել քան զմարախ, եւ ոչ է
24 նոցա թիւ։ Յամօթ եղեւ դուստրն Ե-
գիպտացւոց, մատնեցաւ ի ձեռս հիւսի-
25 սային զօրացն։ Ասէ Տէր զօրութեանց՝
Աստուած Իսրայելի. Ահաւասիկ ես խնդ-
րեցից զվրէժ յԱմոնայ [14]որդւոյ նորա",
ի Փարաւոնէ եւ յԵգիպտացւոց, եւ ի
գից նոցա եւ ի թագաւորաց նորա, եւ
ի Փարաւոնէ եւ ի յուսացելոց ի նա։
26 Եւ մատնեցից զնոսա ի ձեռս խնդրողաց
անձանց նոցա, եւ ի ձեռս Նաբուքոդո-
նոսորայ արքային Բաբելացւոց, եւ ի
ձեռս ծառայից նորա. եւ յետ այնորիկ
բնակեսցի իբրեւ զառաջինն, ասէ Տէր։
27 Բայց դու մի երկնչիցիս, ծառայ իմ
Յակոբ, եւ մի զարհուրիցիս, Իսրայէլ.
զի ահաւասիկ ես զերծուցանեմ զքեզ
ի հեռաստանէ, եւ զզաւակ քո ի գերու-
թենէ նոցա. եւ դարձցի Յակոբ եւ դա-
դարեսցէ եւ ննջեսցէ, եւ ոչ ոք իցէ որ
28 լլկիցէ զնա։ Եւ դու մի երկնչիր. ծա-
ռայ իմ Յակոբ, ասէ Տէր, զի ես ընդ
քեզ եմ. թէ արարից վախճան ամենայն
ազգաց՝ ուր ցրուեցի զքեզ անդր, այլ
քեզ ոչ արարից վախճան. եւ խրա-
տեցից զքեզ յիրաւունս, եւ [15]քաւելով
ոչ քաւեցից" զքեզ։

## Գլ. խէ

1 [13]Ի վերայ այլազգեաց". Բանն Տեառն
որ եղեւ առ Երեմիա մարգարէ ի վե-
րայ [16]այլազգեաց, մինչչեւ հարեալ էր
2 Փարաւոնի զԳազա։ Այսպէս ասէ Տէր.
Ահաւասիկ ջուրք ելանեն ի հիւսիսոյ,
եւ եղիցին հեղեղատք յորդաձայնք, եւ
ողողեսցեն զերկիրն լրիւ իւրով, զքա-
ղաքն եւ զբնակիչս նորա. բողոք բարձ-
ցեն մարդիկ եւ աղաղակեսցեն ամե-
3 նայն բնակիչք երկրին։ Ի ձայնէ [17]աս-
պատակի նորա, ի զինուց ոտից" նորա

[1] Ոմանք. յերկրին [2] Ոմանք. կոյս դուստր [3] Ոմանք. զանարգանս [4] Ոմանք. հզօրն ի վերայ հզօրի գլորեցաւ [5] Ոմանք. եւ ի Տափնաս, ազդ արարէք [6] Ոմանք. շուրջ զքեւ։ (15) Ընդէ՞ր ապականեցան զօրութիւնք քո, ոչ կացին յականանի, զի Տէր ընկէց զնոսա։ (16) Գթեցոյց զբազումս. անկան եւս [7] Ոմանք. սրոյ աւերիչին։ (17) Կոչեցին անդ զՓարաւոն արքայ Եգիպտացւոց՝ Աղմուկ, որ անցոյց զժամանակն առհմանեալ։ [8] Ոմանք. Թագաւորն որոյ Տէր [9] Ոմանք. աւերակ՝ [10] Ոմանք. այլ կորուստ ի հիւսիսոյ գայ, գայ

[11] Ոմանք. եյցէ, զի զօրութեամբ եկեսցեն [12] Ոմանք. Հարցեն [13] Յոմանս. պակասէ [14] Ոմանք. Նովացւոյ [15] Ոմանք. և ոչ ի սպառ անպարտ արձակեցից [16] Ոմանք. Փղշտացւոց, այսպէս եւ այլուր [17] Ոմանք. ամբակաց երիվարաց

եւ ի չաչելոյ կառաց նորա եւ ի շառա-
չելոյ անուոցն նորա, ոչ դարձցին
հարք առ որդիս իւրեանց ի լքմանէ ձե-
4 ռաց իւրեանց, Յաւուրն յորում գայցէ
կորուսանել զամենայն այլազգիսն, [1]եւ
կորուսից՚ զՏիւր եւ զՍիդոն, զամե-
նայն մնացորդս օգնականութեան նոցա.
[2]Եւ սատակեսցէ Տէր զայլազգիս զմնա-
5 ցորդս [3]կղզեացն եւ զԳամրաց՚։ Հասցէ
կնդութիւն ի վերայ Գազայ. կործանե-
ցաւ Ասկաղոն, [4]եւ մնացորդքն Ենակի-
6 մայ։ Մինչեւ յե՞րբ կոտորեսցես, սուր՚
Տեառն, մինչեւ յե՞րբ ոչ դադարիցես.
դարձիր ի պատեան քո, դադարեա եւ
7 փերացիր։ Զիա՞րդ դադարիցէ, զի Տէր
հրամայեաց [5]զնա ի վերայ՚ Ասկաղոնի
եւ ի վերայ ծովեզերեայցն [6]մնացելոց
զարթնուլ՚։

## ԳԼ. ԽԸ

1 Ի վերայ Մովաբու այսպէս ասէ Տէր
զօրութեանց՝ Աստուած Իսրայելի. Վա՜յ
ի վերայ Նաբաւայ, զի կորեաւ. յամօթ
եղեւ, առաւ Կարիաթեմ. յամօթ եղեւ
Մասագաբ, ի պարտութիւն մատնե-
2 ցաւ։ Եւ ոչ եւս իցեն պարծանք Մո-
վաբու յԵսեբոն. խորհեցան ի վերայ նո-
րա չարիս, Եկայք հարցուք զնա յազ-
գէ, եւ [7]լռելով լռեսցէ՚, զկնի քո չոգես-
3 ցի [8]սուր։ Զի ձայն աղաղակաց յՈրով-
նայիմայ, սատակումն եւ բեկումն մեծ.
4 Բեկաւ Մովաբ. [9]ձայն տուք ի Սեգովր.
5 զի լցաւ Աղովթ լալովք. Ելցէ լալով
ընդ ճանապարհն Արոնեայիմայ. աղ-
6 նապ եւ ձայն բեկման լուայ՚։ Փախե-
րուք եւ ապրեցուցէք զանձինս ձեր, եւ
7 եղիջիք իբրեւ [10]ցցիռ յանապատի։ Քան-
զի յուսացեալ էիր [11]յամուրս քո, եկես-
ցեն նեղութիւնք՚ եւ դու ըմբռնեսցիս,
եւ ելցէ Քամովս ի գերութիւն, քուրմք
նորա եւ իշխանք նորա միանգամայն։
8 Հասցէ սատակումն ի վերայ ամենայն
քաղաքաց, եւ մի քաղաք մի՛ ապրես-
ցի, եւ կորիցէ [12]բնակիչ եւ սատակես-
ցի դաշտականն, [13]այսպէս ասէ Տէր.
9 Տուք նշանակ Մովաբու. զի ասչարե-
լով ասչարեսցի՚, եւ ամենայն քաղաքք
նորա յանապատ եղիցին առ ի չգոյէ
10 բնակչաց։ Անիծեալ լիցի որ գործէ զգործ
Տեառն հեղգութեամբ, եւ անիծեալ լի-
ցի որ [14]վերացուսցէ զսուր իւր յարենէ
[15]նորա։
11 Հանգուցեալ էր ի մանկութենէ իւրմէ
Մովաբ, եւ [16]յուսացեալ էր ի փառս՚ իւր, եւ
չէր թափեալ աման յամանոյ, եւ ոչ երթեալ
ի գերութիւն. վասն այնորիկ կայր համ
նորա ի նմին, եւ հոտ նորա ոչ պակասեաց։
12 Վասն այնորիկ ահա աւուրք գան, ասէ
Տէր, եւ առաքեցից նմա [17]կորացուցիչս
եւ կորացուսցեն՚ զնա, եւ զանօթս նո-
րա մանրեսցեն, եւ զամանս նորա փշրես-
13 ցեն։ Եւ ամաչեսցէ Մովաբ ի Քամով-
սայ, որպէս ամաչեաց տունն Իսրայելի
14 ի Բեթելայ յուսոյն իւրեանց։ Զիա՞րդ
ասիցէք թէ Հզօրք եմք եւ արք զօրա-
15 ւորք պատերազմի։ Կորեաւ Մովաբ եւ
քաղաք նորա, եւ ընտիր ընտիր երիտա-
սարդք նորա անկան ի սպանումն, ասէ
Արքայ՝ որոյ Տէր զօրութեանց անուն է
16 նորա։ Մերձ է ի հասանել օր Մովաբու,
17 եւ չարիք նորա արագեն յոյժ. [18]Խախ-
տեցէք զնա շուրջանակի՚ ամենեքին
որք գիտէք զանուն նորա՝ ասացէք,
Զիա՞րդ խորտակեցաւ ցուպն [19]գեղեցիկ,
18 գաւազանն մեծարանաց։ Էջ ի փառաց
եւ նիստ [20]ի գիջի, նանգական դուստրդ
Դեբոնայ, զի [21]կորեաւ Մովաբ, եհաս
19 ապականիչ ամրոցաց քոց՚։ Կաց յանցս
ճանապարհաց եւ հայեաց՝ որ նստիցդ
յԱրոյեր, եւ հարց զփախստականս եւ
զապրեալս, եւ ասասջիր, Զի՞նչ գործեցաւ։
20 Յամօթ եղեւ Մովաբ, զի խորտակե-
ցաւ. ճչեա եւ աղաղակեա եւ ձայն
21 տուր յԱռնովն՝ թէ Կորեաւ Մովաբ։ Եւ
դատաստանք հասեալ գան յերկրին [22]Մի-
սովրայ, ի Քիղոնն եւ Յասսա եւ ի Մով-

[1] Եբր. խորտակել [2] Եբր. զի [3] Եբր. կղզւոյն Կափթորայ [4] Եբր. Մնացորդք դաշտին նոցա. մինչեւ յե՞րբ ցտեսցիս։ (6) Սուրդ [5] Եբր. նմա. ի վերայ [6] Եբր. անդ կացոյց զնա [7] Եբր. դու, Մադմէն, լռեսցես. [8] Եբր. սուր [9] Եբր. լսելի արարէք զաղաղակ փոքունք նորա։ (5) Զի ընդ զառ ի վեր Ղուիթայ ելցեն լալով մեծաւ, զի ընդ զառ ի վայրն Որոնայիմայ թշնամիքն լուան ղոչիւն կոտորածի։ [10] Եբր. զմոշավայրի [11] Եբր. ի գործս եւ ի գանձս քո,

[12] Եբր. հովիտն [13] Եբր. որպէս ասաց Տէր։ (9) Տուք թեւս Մովաբու, զի թռչել թռիցէ [14] Եբր. արգելուցու [15] Յ Եբր. [illegible] [16] Եբր. դադարեալ ի մրուրս [17] Եբր. փոխիչս, եւ փոխեսցեն [18] Եբր. Ողբացէք զնա ամենեքին որ շուրջ էք զնովաւ, եւ [19] Եբր. զօրութեան [20] Եբր. յերաշտի [21] Եբր. կործանիչն Մովաբու ել ի վերայ քո, աւերեաց զամուրս քո [22] Ա. [illegible] դաշտականի

22 փաթ, Եւ ի Դեբոն եւ ի Նաբաւ, եւ ի
23 տունն Դեբղաթեմայ, Եւ ի Կարիաթեմ
եւ ի տունն Գամաղլայ, եւ ի տունն Մաւ-
24 ոնայ, Եւ ի Կարիաւոթ եւ ի Բոսոր,
եւ յամենայն քաղաքս երկրին Մովա-
25 բայ ի հեռաւորս եւ ի մերձաւորս։ Խոր-
տակեցաւ եղջեւրն Մովաբու, եւ [1]յանդգ-
նութիւն նորա խորտակեցաւ, ասէ Տէր։
26 Արբեցուցէք զնա, զի ի վերայ Տեառն
մեծաբանեաց. [2]ծափ զծափս հարցէ Մո-
վաբ", եւ եղիցի ի կատականս եւ ինքն։
27 Զի ո՞չ [3]եթէ ի ծաղր ինչ էր քեզ Իսրա-
յէլ եւ ի գողո՞նս գտան, յորժամ մարտն-
28 չէիր ընդ նմա. Նովաւ գերեսցիս։ Թո-
ղին զքաղաքս եւ բնակեցան" ի քարա-
ծերպս, բնակիչք Մովաբու. [4]եղեն իբ-
րեւ զաղաւնիս բունեալք ի քարածերպս,
ի բերանս սորոց։
29 Լուաք զհպարտութիւնն Մովաբու, զի
հպարտացաւ յոյժ բարձրութիւն նորա
եւ հպարտութիւն իւր եւ ամբարտաւա-
նութիւն իւր, եւ բարձրացաւ սիրտ
30 նորա։ Եւ ես ծանեայ [5]զգործս նորա.
ո՞չ ապաքէն ըստ կարի նորա լիցին բա-
զուկք նորա. այլ նա ոչ այնպէս արար"։
31 Վասն այնորիկ ճիչ [6]բարձէք ի վերայ
Մովաբու, գուժեցէք" յամենայն կողմանց
Մովաբու, ի վերայ արանց [7]Կադեկոց, փե-
32 տեկոց, մրեկոց, եւ մրմնջեսցէ"։ Իբրեւ
զլալիւնն Յազերայ լացցուք զքեզ, այ-
գիդ Սաբամայ, բարունակք քո ձգեցան
ընդ ծով, [8]քաղաքք Յազերայ հասին.
ի վերայ մրգոց քոց եւ ի վերայ կթոց
33 քոց եհաս սատակումն։ Մաշեցաւ ու-
րախութիւն եւ ցնծութիւն [9]ի Կարմե-
ղայ եւ յերկրէն Մովաբացւոց. [10]զգինի էր
ի հնձանս քո. ընդ առաւօտս ոչ կոխե-
ցին, եւ ընդ երեկս ոչ հանին զձայն"
34 հնձանահարաց։ Յաղաղակէն յԵսեբոնայ
մինչեւ յԵղեաղէ եւ մինչեւ ցՅասսա, [11]քա-
ղաքք նոցա," ետուն զձայնս իւրեանց, ի
Սեգովրայ մինչեւ յՈրոնիմայիմ, [12]եւ զոյժ
ի Սաղեսայ". զի եւ ջուրն Նեմերիմայ ի
35 սպառ խորշակի եղիցի։ Եւ կորուսից զՄո-
վաբ, ասէ Տէր, որ ելանէր ի բագինս եւ
արկանէր խունկս աստուածոց [13]օտարաց։
36 Վասն այնորիկ սիրտ իմ ի վերայ Մո-
վաբու իբրեւ զփող գոչեսցէ. սիրտ իմ ի
վերայ արանց [7]ատրամայքն կադեկոց" իբրեւ
զհնչիւն փողոյ. վասն այնորիկ զոր ինչ
37 ստացան՝ կորեաւ [14]ի մարդկանէ։ Ա-
մենայն գլուխք [14]ընդ ամենայն տեղիս"
գերծցին, եւ ամենայն մօրուք խզես-
ցին, [14]եւ ամենայն ձեռք կոծեսցին", եւ
ամենայն հասակք քրձազգածք եղիցին։
38 Եւ յամենայն տանիս Մովաբայ եւ ի հրա-
պարակս նորա ամենեւին կոծ. զի խոր-
տակեցի զՄովաբ իբրեւ զաման, որ ոչ
39 իմիք իցէ պիտանացու, ասէ Տէր։ Զիա՞րդ
փոփոխեցաւ. ողբս ասէք. զիա՞րդ դար-
ձոյց զթիկունս [15]իւր, ամաչեաց եւ եղեւ
ի ծաղր եւ ի քէնս ամենեցուն որ շուրջ
40 զնովաւ։ Զի այսպէս ասէ Տէր. Ահա-
ւասիկ իբրեւ զարծուի զիմեսցէ, եւ
տարածեսցէ զձեռս իւր ի վերայ Մովա-
41 բու։ Առաւ Կարիաւոթ, եւ ըմբռնե-
ցան ամուրք նորա, եւ եղիցի սիրտ զօ-
րաւորացն Մովաբայ յաւուր յայնմիկ
42 իբրեւ զսիրտ կանանց յերկունս։ Եւ կո-
րիցէ Մովաբ [16]ի բազմութենէ, զի ի վե-
43 րայ Տեառն մեծաբանեաց։ Վիհ, եւ ահ,
եւ որոգայթ ի վերայ քո որ բնակեալդ
44 ես [17]ի Մովաբ։ Եւ որ փախիցէ յերեսաց
ահին՝ անկցի ի վիհն, եւ որ ելանիցէ ի
վհէ անտի՝ ըմբռնեսցի յորոգայթն. զի
ածից զամենայն ի վերայ Մովաբու յա-
մին յորում հանդէս արարից նմա, ասէ
45 Տէր։ Եւ յարկան Եսեբոնայ հասին փա-
խուցեալք [18]յորոգայթէն. զի հուր ել յԵ-
սեբոնայ, եւ բոց ի քաղաքէն Սեհոնայ,
եւ եկեր [19]զիշխանս Մովաբայ, եւ քննեաց
46 զորդիսն Ամոնայ"։ Վա՜յ քեզ, Մովաբ,
[20]կորուսեր զժողովուրդն" Քամովսայ. զի
առան ուստերք [21]նորա եւ դստերք [20]նորա
47 ի գերութիւն։ Եւ դարձուցից զգերու-
թիւնն Մովաբու յաւուրս յետինս, ասէ Տէր։
Մինչեւ ցայս վայր են դատաստանք
Մովաբու։

[1] Եբր. բազուկ [2] Եբր. Թաւալեսցի Մովաբ ի փսխածի իւրում [3] Եբր. ի ծաղր ինչ էր քեզ Իսրայէլ, եւ ընդ գո՞ղս գտաւ, զի յորժամ խօսէիր զնմանէ, շարժէիր զգլուխ։ (28) Թողէք զքաղաքս եւ բնակեցէք [4] Եբր. եղերուք [5] Եբր. զբարկութիւն նորա, այլ ընդունայն է. ի զուր են պարծանք նորա [6] Եբր. բարձից ի վերայ Մովաբու, գուժեցից [7] Եբր. Կիրհարեսայ սուգ առցի [8] Եբր. մինչեւ ի ծովն [9] Այլք՝ յարտէն պտղաւէտ [10] Եբր. եւ զգինին ի հնձանաց դադարեցուցի. մի՛ կոխեսցի ցնծութեամբ, մի՛ լիցի ձայն [11] Եբր. [illegible]

[12] Եբր. իբրեւ զերինջ երեմեան [13] Եբր. իւրոց
[14] Եբր. ի վերայ ամենայն ձեռաց եղիցին կտրածք
[15] Եբր. իւր Մովաբ [16] Եբր. ի լինելոյ ազգ
[17] Եբր. ի Մովաբ, ասէ Տէր [18] Եբր. առանց զօրութեան [19] Եբր. զծագս Մովաբայ, եւ զգագաթունս որդւոց աղաղակի [20] Եբր. կորեաւ ժողովուրդն [21] Եբր. քո

Գլ. ԽԹ

1 Ի վերայ որդւոցն Ամոնայ, այսպէս
ասէ Տէր. Միթէ որդիք ո՞չ իցեն Իսրա-
յէլի, կամ [1]յանձանձիչ ո՞չ իցէ նորա.
ընդէ՞ր առնփոխեաց Մեղքոմ" զԳադ. եւ
ժողովուրդ սոյա ի քաղաքս նոցա բնա-
2 կէ։ Վասն այդորիկ ահա աւուրք գան,
ասէ Տէր, եւ լսելի արարից յՌաբովթ
որդւոցն Ամոնայ զգոյժ [2]քաղաքացն.
եւ եղիցի յանապատ եւ ի կորուստ, եւ
[3]բագինք նորա հրով այրեսցին, եւ
առցէ Իսրայէլ զիշխանութիւն իւր",
ասէ Տէր։
3 Գուժեա, Եսեբոն, զի կորեաւ Գեհ.
բողոք բարձէք, դստերք Ռաբայ,
քրձազգածք եղերուք [4]եւ մոլեգարուք",
սուգ առէք եւ յայսկոյս յայնկոյս ընթա-
ցարուք զցանկովք. զի Մեղքոմ ի գերու-
թիւն երթիցէ, քուրմք նորա եւ իշխանք
4 ի միասին։ Զի՞ ցնծայցես [5]ի խորանս քո,
Ջեփ, եւ ի դաշտս քո", դուստր մարհու-
թեան, որ յուսացեալ էիր ի գանձս քո
5 եւ ասէիր, Ո՞ գայցէ ի վերայ իմ։ Ա-
հաւասիկ ես ածից ի վերայ քո երկեւղ,
ասէ Տէր զօրութեանց, յամենայն կող-
մանց շուրջ զքեւ բնակելոցդ. եւ ցրուես-
ջիք յիւրաքանչիւր կողմ, եւ ոչ ոք իցէ
6 որ ժողովիցէ զթափառականսն։ Եւ յետ
այնորիկ դարձուցից զգերութիւն որդ-
ւոցն Ամոնայ, ասէ Տէր։
7 Ի վերայ Եդովմայ այսպէս ասէ Տէր
զօրութեանց. Ո՞չ եւս գոյ իմաստու-
թիւն ի Թեման. կորեա՛ւ խորհուրդ ի
հանճարեղաց. գնա՞ց իմաստութիւն նո-
8 ցա։ [6]Խաբեցաւ տեղի նորա. ծանրա-
ցուցէք ի նստել, բնակիչք Դեդանայ, զի
զժուարինս արար. ածի ի վերայ նորա
ժամանակ" յորում այց արարից նմա։
9 [7]Զի կթողք հասին ի վերայ քո, եւ ոչ
թողցեն ի քեզ մնացորդս. իբրեւ գողք
գիշերոյ դիցեն զձեռս իւրեանց ի վերայ
10 նոցա։ Զի ես կործանեցի" զԵսաւ, եւ
յայտնեցի զծածուկս նորա, եւ թաքչել
ոչ կարասցէ. կորեաւ զաւակ նորա [8]ի
11 ձեռանէ եղբօր եւ դրացւոյ իւրոյ. Եւ
չիք մնալ որբոյն քում թէ կեցցէ, եւ
12 այրիք նոցա յիս յուսասցին" Զի այսպէս
ասէ Տէր. Ահա որոց ոչ էր օրէն ըմպել
զբաժակն՝ արբին ըմպելով, եւ դու ար-
դարանալով արդարանայցե՞ս. ոչ արդա-
13 րասցիս, այլ ըմպելով արբցես։ Զի յանձն
իմ երդուայ, ասէ Տէր, թէ յապական-
նութիւն եւ ի նախատինս եւ յանապատ
եւ յանէծս [9]եղիցիս ի մէջ բաժնի նո-
րա", եւ ամենայն քաղաքք նորա եղի-
ցին աւերակք յաւիտեան։
14 Լուր լուայ ի Տեառնէ, եւ հրեշտակս
յազգս ազգս առաքեաց. ժողովեցա-
րուք եւ հասէք ի վերայ նորա. արիք
15 ելէք ի պատերազմ. Զի ահաւասիկ ես
փոքր [10]մնես եւս եւ սակաւ" զքեզ ի մէջ
ազգաց, արհամարհեալ ի մէջ մարդկան։
16 [11]Այպանութիւն քո հասոյց քեզ զայս.
յպրտութիւն սրտի քո արար զքեզ ծա-
կամուտ վիմաց, եւ առ զզօրութիւն
բարձրացեալ բլրոյն քո". զի եթէ բարձ-
րացուցանես իբրեւ զարծուի զբոյն քո,
17 եւ անտի իջուցից զքեզ, ասէ Տէր։ Եւ
եղիցի Եդովմ յանապատ, եւ ամենայն
որ անցանիցէ ընդ նա՝ զարմասցի, եւ
շչեսցէ ի վերայ ամենայն հարուածոց
18 նորա. Որպէս կործանեցաւ Սոդոմ եւ
Գոմոր եւ [12]բնակիչք նորա, ասէ Տէր.
եւ մի՛ նստցի ի նմա մարդ, եւ մի՛ բնա-
19 կեսցէ ի նմա որդի մարդոյ։ Ահաւասիկ
իբրեւ զառեւծ ելցէ [13]ի միջոյ Յորդանա-
նու ի տեղին Եթեմա". զի վաղվաղակի
հալածական արարից [14]զնոսա ի նմանէ.
եւ ո՞վ է ընտրեալ [15]ի նմա, եւ այցա-
րարից նմա", կամ ո՞վ ընդդէմ դառնայ-
ցէ ինձ, կամ ո՞վ իցէ այն հովիւ որ ընդ-
20 դէմ կայցէ երեսաց իմոց։ Վասն այդո-
րիկ լուարուք զխորհուրդ Տեառն զոր

[1] Եբր. ժառանգ ո՞չ իցէ նորա. ընդէ՞ր Մեղքոմ ժառանգեաց [2] Եբր. պատերազմի [3] Եբր. դստերք (գեղք) նորա հրով այրեսցին. և ժառանգեսցէ Իսրայէլ զորս ժառանգեցին զնա [4] Յեբր. պակասէ [5] Եբր. ի հովիտս քո. հովիտ քո ողողեալ է [6] Եբր. Փախերուք, դարձէք, բնակեցարուք ի խորս, բնակիչք Դեդանայ. զի զկորուստ Եսաւայ ածի ի վերայ նորա՝ ի ժամանակի [7] Եբր. Եթէ կթողք գային ի վերայ քո, ո՞չ թողուին ճիռս. եթէ գողք գիշերի գային, ո՞չ առնուին զբաւականն իւրեանց. (10) Զի ես խայտառակեցի [8] Եբր.՝ և եղբայր նորա եւ դրացի նորա եւ ոչ գոյ։ (11) Թող զորբս քո, ես կեցուցից. և այրիք քո յիս յուսասցին։ [9] Եբր. եղիցի Բոսրա [10] Եբր. արարից [11] Եբր. Երկեւղ քո, յպրտութիւն սրտի քո խաբեցին զքեզ, ով որ բնակեսդ ի ծակս վիմաց. կցիս ի բլուրս բարձունս [12] Եբր. մերձաւորք [13] Եբր. ի յորդութենէ Յորդանանու ի բնակութիւն ամրութեան [14] Եբր. զնա [15] Եբր. կացուցից զնա ի վերայ նորա. զի ո՞վ ոք է իբրեւ զիս

խորհեցաւ ի վերայ Եդովմայեցւոց. եւ
զխորհուրդ նորա զոր խորհեցաւ ի վե-
րայ բնակչաց Թեմանայ. [1]եթէ ոչ հար-
ցին յետինք ոչխարացն, բայց եթէ յա-
21 ւիտեան կայցեն, քաղաքք նոցա": ի
ձայնէ կործանման նոցա շարժեցաւ եր-
կիր. [2]գոյժ քո եհաս ի ծով Կարմիր, եւ
22 լսելի եղեւ աղաղակ քո": Ահաւասիկ
իբրեւ զարծուի վերասցի, եւ սլասցի
եւ տարածեսցէ զթեւս իւր ի վերայ
Բոսրայ. եւ եղիցի սիրտ զօրաւորացն
Եդովմայ յաւուր յայնմիկ իբրեւ զսիրտ
կանանց յերկունս:
23 Ի վերայ Դամասկոսի: Ամօթ եղեւ
Եմաթ եւ Արփաթ, զի լուր չարեաց
լուան, յիմարեցան. [3]ի ծովուն զայ-
24 րացան՝ եւ հանգչել ոչ կարացեն": Լքաւ
Դամասկոս, դարձաւ ի փախուստ [4]եւ
կործանեցաւ": դողումն կալաւ զնա, եւ
երկունք ձեպեցին զնա իբրեւ զծննդա-
25 կանի: [5]Եւ զիա՞րդ է, զի ոչ թողուր
զքաղաքն իմ, զաւանն զոր սիրեցի":
26 Վասն այնորիկ անկցին երիտասարդք
[6]ի հրապարակս քո", եւ ամենայն արք
պատերազմօղք կործանեսցին յաւուր
27 յայնմիկ, ասէ Տէր զօրութեանց: Եւ
վառեցից հուր ի պարիսպն Դամասկո-
սի, եւ կերիցէ [7]զհրապարակս որդւոյն
Ադերայ":
28 Ի վերայ Կեդարու, [8]ի վերայ արքունոջ
հանդրուանին", զոր եհար Նաբուքոդո-
նոսոր արքայ Բաբելացւոց, այսպէս ա-
սէ Տէր. Արիք, ելէք ի վերայ Կեդարու,
29 եւ հարէք զորդիսն [9]Կեդեմայ: Զխորանս
նոցա եւ զխաշինս նոցա առցեն, [10]զհան-
դերձս նոցա եւ զամենայն կահ եւ զկա-
րասի նոցա, եւ զուղտերամակս նոցա
առցեն իւրեանց. եւ [11]կոչեցէք ի վերայ
30 նոցա կորուստ շուրջանակի: Փախերուք,
[12]սաստիկ. խորեցէք ի նստել, բնա-
կիչք [13]հանդրուանիդ, ասէ Տէր. զի խոր-
հուրդ խորհեցաւ ի վերայ ձեր Նաբու-
քոդոնոսոր արքայ Բաբելացւոց, խոր-
հեցաւ ի վերայ քո խորհուրդ:
31 [14]Արի, ել" ի վերայ ազգին զաղարելոյ՝
որ նստի ի հանդստեան, ասէ Տէր, ո-
րոյ ոչ դրունք եւ ոչ նիգք, առանձինն
32 բնակեալք: Եւ եղիցին ուղտերամակք
նոցա յաւառ, եւ բազմութիւն խաշանց
նոցա ի կորուստ. եւ հոսեցից ընդ ա-
մենայն հողմս զսպառեալսն առ երե-
սօք, եւ յամենայն կողմանց նոցա ածից
33 նոցա կործանումն, ասէ Տէր: Եւ ե-
ղիցի [15]հանդրուանն բնակութիւն ջայլա-
մանց", եւ անապատ մինչեւ յաւիտեան.
եւ մի՛ բնակեսցէ ի նմա մարդ, եւ մի՛
նստցի ի նմա որդի հողածնի:
34 [4]Ի վերայ Եղամայ:" Բանն Տեառն որ
եղեւ առ Երեմիա մարգարէ վասն Եղա-
մայ ի սկզբան թագաւորութեանն Սե-
35 դեկիայ արքայի Յուդայ, եւ ասէ. Այս-
պէս ասէ Տէր զօրութեանց [16]Աստուած
Իսրայէլի. Ահաւադիկ խորտակեցաւ
աղեղն Եղամայ, իշխանութիւն բռնա-
36 ւորութեան" նոցա: Եւ ածից ի վերայ
Եղամայ չորս հողմս ի չորից կողմանց
երկնից, եւ ցրուեցից զնոսա ընդ ամենայն
հողմս ընդ այնոսիկ. եւ ոչ լիցէ ազգ յոր
ոչ հասանիցեն թափառականքն Եղամայ:
37 Եւ զարհուրեցուցից զնոսա առաջի թշնա-
մեաց նոցա որք խնդրէին զանձինս նո-
ցա. եւ ածից ի վերայ [17]նոցա ըստ բար-
կութեան" սրտմտութեան իմոյ, ասէ
Տէր. եւ արձակեցից զսուր [4]իմ զկնի
38 նոցա մինչեւ սպառեսցէ զնոսա: Արկից
զաթոռ իմ յԵղամ, եւ կորուսից անտի
զթագաւորս եւ զմեծամեծս, ասէ Տէր:
39 Եւ եղիցի յաւուրս յետինս դարձուցից
զգերութիւն Եղամայ, ասէ Տէր: [4]Ի
սկզբան թագաւորութեան Սեդեկեայ
արքայի եղեւ բանս այս ի վերայ Ե-
ղամայ:"

## Գլ. Ծ

1 [4]Ի վերայ Բաբելացւոց:" Բանն զոր խօ-
սեցաւ Տէր ի վերայ Բաբելոնի՝ առ եր-
կիրն Քաղդէացւոց ի ձեռն Երեմեայ մար-
2 գարէի: Պատմեցէք յազգս, եւ լու ա-

[1]Եբր. եթէ ոչ վանեսցեն զնոսա փոքունք հօտին, եթէ ոչ աւերեսցի ի վերայ նոցա բնակութիւն նոցա [2]Եբր. գո՛յժ, ի ծով Կարմիր լսելի եղեւ ձայն նորա [3]Եբր. ի ծովու տագնապ, հանգչել ոչ կարասցէ [4]Յեբր. պակասէ [5]Եբր. Զիա՞րդ ոչ թողաւ քաղաքն գովութեան, աւան ուրախութեան իմոյ [6]Եբր. նորա ի հրապարակս նորա [7]Եբր. զապարանս Բենադադայ [8]Եբր. եւ ի վերայ թագաւորութեանն Հասորայ. [9]Այլք՝ արեւելից [10]Եբր. զվարագոյրս [11]Եբր. կոչեսցեն [12]Եբր. խոյս տուք վաղվաղակի [13]Եբր. Հասորայ

[14]Եբր. Արիք, ելէք [15]Եբր. Հասոր բնակութիւն վիշապաց [16]Եբր. Ահաւադիկ ես խորտակեմ զաղեղն Եղամայ, զսկիզբն զօրութեան [17]Եբր. նոցա չարիս, զբարկութիւն

բարէք, նշան կանգնեցէք, լսելի արա-
րէք. մի՛ ծածկիցէք, ասասջիք, Առաւ Բա-
բելոն, յամօթ եղեւ Բէլ, [1]փափուկքն
աներկեւղք, մատնեցաւ" Մերոդաք,
յամօթ եղեն կուռք նորա, [2]ամաչեցին
3 զարշելիք նորա։ Զի ել ի վերայ նորա
ազգ ի հիւսիսոյ, նա դիցէ զերկիր նորա
յապականութիւն. եւ ոչ ոք իցէ որ բնա-
կիցէ ի նմա ի մարդոյ մինչեւ յանասուն,
զի խախտեցան եւ գնացին։
4 Յաւուրսն յայնոսիկ եւ ի ժամանա-
կին յայնմիկ, ասէ Տէր, եկեսցեն որ-
դիքն Իսրայելի, ինքեանք եւ որդիքն
Յուդայ ի միասին, շրջեսցին եւ լալով
գայցեն [3]առ Տէր" Աստուած իւրեանց
5 խնդրեսցեն. Մինչեւ ի Սիոն հարցցեն
ի ճանապարհէ, [4]այսր դիմեսցեն, եւ ե-
կեսցեն եւ ապաւինեսցին ի Տէր. զի
ուխտ յաւիտենից է, եւ ոչ մոռասցին"։
6 Իբրեւ զոչխարս կորուսեալս եղեւ ժո-
ղովուրդ իմ, հովիւք նոցա [5]մերժեցին
զնոսա, ի վերայ լերանց մոլորեցուցին
զնոսա. ի լեռնէ ի բլուր գնացին, մո-
7 ռացան զմակաղատեղս իւրեանց։ Ամե-
նեքեան որ գտանէին՝ [6]սատակէին զնո-
սա. թշնամիք նոցա ասացին՝ [7]Մի՛ նե-
րեսցուք նոցա", փոխանակ զի մեղան
Տեառն, [8]արօտք արդարութեան է, եւ
Տեառն որ ժողովեաց զհարսն նոցա։
8 Օտարացարուք" ի միջոյ Բաբելոնի. եւ
յերկրէդ Քաղդէացւոց ելէք, եւ եղե-
րուք իբրեւ զնաղս առաջի խաշանց։
9 Զի ահաւասիկ ես յարուցից եւ ածից
ի վերայ Բաբելացւոց զժողովս ազգաց
մեծամեծաց յերկրէ հիւսիսոյ, եւ ճա-
կատեսցին զնովաւ. եւ անտի ըմբռնես-
ցի, իբրեւ նետ իմաստուն պատերազ-
10 մողի՝ որ ոչ դարձցի ունայն։ Եւ եղիցի
երկիրն Քաղդէացւոց յաւար, եւ ամենայն
աւարառուքն նորա յագեսցին, ասէ Տէր.
11 Զի ուրախ լինէիք եւ պարծէիք
[9]յափշտակել զժառանգութիւն իմ",
զի խայտայիք իբրեւ զուարակս ի վե-
րայ դալարոյ, եւ [10]ոգորէիք իբրեւ զցուլս",
12 Յամօթ եղեւ մայրն ձեր յոյժ, [11]մայրն
որ ի բարութեան էր. ահաւասիկ վախ-
ճանի" ազգաց՝ աւեր, անջրդի եւ անա-
13 պատ։ Ի բարկութենէ Տեառն մի՛ բնա-
կեսցի, այլ եղիցի յապականութիւն առ
հասարակ. եւ ամենայն որ անցանիցէ
ընդ Բաբելոն՝ զարմասցի, եւ շչեսցէ ի
14 վերայ ամենայն հարուածոց նորա։ Ճա-
կատեցարուք շուրջ զԲաբելոնիւ, ամե-
նայն աղեղնաւորք, ձիգ դիք ի նա, եւ
մի՛ խնայէք ի նետս ձեր, զի Տեառն մե-
15 ղաւ։ Խրախոյս բարձէք շուրջ զնովաւ,
զի լքան ձեռք իւր. անկան [12]մահար-
ձանք, եւ կործանեցան պարիսպք նո-
րա, զի վրէժխնդրութիւն [13]յԱստուծոյ
է. խնդրեցէք վրէժս ի դմանէ, որպէս
16 արարն՝ արարէք դմա։ Սատակեցէք
[14]զզաւակ ի Բաբելոնէ, որ ամուցա-
մանգաղ ի ժամանակի հնձոց. յերեսաց
[15]Յունական սրոյն իւրաքանչիւր ի ժո-
ղովուրդ իւր դարձցին, եւ իւրաքան-
չիւր յերկիր իւր փախիցեն։
17 Ոչխար մոլորեալ Իսրայէլ, առիւծք
[16]մերժեցին զնա. նախ եկեր զնա թա-
գաւորն Ասորեստանեայց, եւ յետոյ զոս-
18 կերս [17]նորա արքայն Բաբելացւոց։ Վասն
այսորիկ այսպէս ասէ Տէր զօրութեանց՝
Աստուած Իսրայելի. Ահաւասիկ ես
խնդրեցից վրէժ յարքայէն Բաբելացւոց
եւ յերկրէ նորա, որպէս խնդրեցի վրէժ
19 յարքայէն Ասորեստանեայց։ Եւ [18]պատըս-
պարեցուցից զԻսրայէլ անդրէն ի ճա-
րակս իւր, եւ արածեսցի ի Կարմեղոս
եւ ի Բասան, եւ ի լերինն Եփրեմի եւ ի
Գաղաադ յագեսցին անձինք նոցա։
20 Յաւուրսն յայնոսիկ եւ ի ժամանակին
յայնմիկ, ասէ Տէր, [19]խնդրեսցեն զա-
նիրաւութիւնն Իսրայելի, եւ ոչ եւս
իցէ, եւ զմեղս" Յուդայ եւ ոչ գտանի-
ցին. զի [20]քաւիչ եղէց անիրաւութեանց
21 նոցա ի վերայ երկրի։ Ել դառնութեամբ
ի վերայ նորա, եւ ի բնակչաց նորա

[1] Եբր. բեկաւ [2] Եբր. բեկան [3] Եբր. եւ զՏէր [4] Եբր. անդր երեսք նոցա. եկայք եւ յարեցարուք ի Տէր յուխտ յաւիտենական, որ ոչ տացի ի մոռացօնս [5] Եբր. մոլորեցուցին [6] Եբր. ուտէին [7] Եբր. Ոչ է մեղ մեղ [8] Եբր. բնակութեան արդարութեան, եւ Յուսոյն հարց իւրեանց, Տեառն։ (8) Խոյս տուք [9] Եբր. ո՛վ յափշտակիչք ժառանգութեան իմոյ

[10] Եբր. վրնջէիք իբրեւ զերիվարս [11] Եբր. պատկառեցաւ որ ծնաւն զձեզ. ահաւասիկ յետինն [12] Եբր. հիմունք նորա [13] Եբր. Տեառն [14] Եբր. զսերմանահան [15] Եբր. աւերիչ [16] Եբր. հալածեցին [17] Եբր. նորա խորտակեաց [18] Եբր. ածից [19] Եբր. խնդրեսցի անիրաւութիւնն Իսրայելի եւ ոչ եւս իցէ, եւ մեղքն [20] Եբր. ներեցից նոցա զորս թողի մնացորդս։ (21) Ել ի վերայ երկրին Ապստամբութեան եւ ի վերայ

խնդրեսջիր վրէժս. սուր եւ ապական-
նութիւն զկնի նոցա", ասէ Տէր, եւ ա-
րասջիր ըստ ամենայնի զոր պատուի-
22 րեցի քեզ։ Ձայն պատերազմի [1]յերկրէն
23 Քաղդէացւոց", եւ բեկումն մեծ։ Զիա՛րդ
խորտակեցաւ եւ մանրեցաւ ուռն ա-
մենայն երկրի, զիա՛րդ եղեւ Բաբելոն
24 յապականութիւն ի մէջ ազգաց։ [2]Յար-
ձակեցայց ի վերայ քո, եւ ըմբռնեսցիս,
Բաբելոն, եւ ոչ գիտասցես". գտար եւ
ըմբռնեցար, զի Տեառն ընդդէմ դար-
25 ձար։ Եբաց Տէր զգանձս իւր, եւ եհան
զանօթս բարկութեան իւրոյ. զի գործ
[3]Տեառն զօրութեանց է յերկրին Քաղ-
26 դէացւոց։ [4]Եկին հասին նմա ժամանակք
իւր", բացէք զշտեմարանս նորա, [5]սրա-
նեցէք զնա իբրեւ զայրս", եւ սատակեցէք
27 զնա. մի՛ մնասցեն նորա մնացորդք։ [6]Ցա-
մաքեցուցէք զամենայն պտուղս" նորա,
եւ իջցեն ի սպանումն. վա՛յ նոցա, զի եկն
օր նոցա եւ ժամանակ վրէժխնդրութեան
28 նոցա։ Ձայն փախուցելոց եւ ապրելոց
յերկրէն Բաբելացւոց, պատմել ի Սիոն
զվրէժխնդրութիւն ի Տեառնէ Աստուծոյ
մերմէ, զվրէժխնդրութիւն տաճարի իւրոյ։
29 Պատուէր տուք բազմաց ի վերայ Բա-
բելոնի, ամենայն աղեղնաւորաց՝ թէ
Բանակեցարուք զնովաւ շուրջանակի,
զի մի՛ ոք իցէ որ ապրիցի ի նմանէ. հա-
տուցէք նմա ըստ գործոց իւրոց, ըստ
ամենայնի զոր արար՝ արարէք նմա. զի
Տեառն ընդդէմ դարձաւ, Աստուծոյ
30 Սրբոյն Իսրայէլի։ Վասն այնորիկ անկ-
ցին երիտասարդք նորա ի հրապարակս
նորա, եւ ամենայն արք պատերազմօղք
նորա անկեալ գնիցեն յաւուր յայնմիկ,
31 ասէ Տէր։ Ահաւասիկ ես ի վերայ քո,
ասէ Տէր զօրութեանց, ի վերայ հպար-
տիդ. զի հասեալ է օր քո եւ ժամանակ
32 վրէժխնդրութեան քո։ Եւ [7]տկարաս-
ցի հպարտութիւն քո" եւ կործանեսցի,
եւ ոչ ոք իցէ որ յարուցանիցէ զնա. եւ
վառեցից հուր [8]յանտառս նորա, եւ կե-
րիցէ շուրջ զնովաւ զամենայն։
33 Այսպէս ասէ Տէր զօրութեանց. Բռնա-
զատեցան որդիքն Իսրայէլի եւ որդիքն
Յուդայ. ամենեքեան որ գերեցին զնո-
սա՝ բռնաբարեցին զնոսա, եւ ոչ կա-
34 մէին արձակել զնոսա։ Որ փրկեաց զնո-
սա Հզօրն, Տէր ամենակալ անուն է
նորա. դատեսցի դատաստան ընդ ոսոխս
[9]իւր, զի բարձցէ զերկիր, եւ զայ-
35 րասցի բնակչաց" Բաբելոնի։ Սուր ի վե-
րայ Քաղդէացւոցն, ասէ Տէր, եւ ի վե-
րայ բնակչացն Բաբելոնի, եւ ի վերայ
ամենայն մեծամեծաց նորա, եւ ի վե-
36 րայ խորհրդականաց նորա. Սուր ի վե-
րայ ըղձութեանց նորա, եւ [10]բարձցին.
սուր ի վերայ պատերազմողաց նորա,
37 եւ լքցին. Սուր ի վերայ երիվարաց եւ
կառաց նորա. սուր [11]ի վերայ նախա-
տակաց նոցա, եւ" ի վերայ ամենայն
խառնաղանճիցն որ ի մէջ նորա, եւ ե-
ղիցին իբրեւ զկանայս. սուր ի վերայ
գանձուց նորա, եւ յափշտակեսցին.
38 [12]Սուր ի վերայ ջուրց նորա, եւ [13]ամա-
չեսցեն, զի երկիր դրօշելոց է, եւ [14]ի
39 վերայ կղզեացն սուլք պարծէին։ Վասն
այնորիկ ճիւաղք բնակեսցեն ի կղզիսն",
եւ բնակեսցեն ի նմա դստերք համբա-
բեաց. եւ մի՛ եւս շինեսցի ի սպառ,
40 եւ մի՛ եւս բնակեսցի յաւիտեան. Որ-
պէս սատակեաց Աստուած զերկիրն Սո-
դոմայեցւոց եւ Գոմորայեցւոց եւ զսահմա-
նակիցս նորա, ասէ Տէր, եւ մի՛ բնա-
կեսցէ անդ մարդ, եւ մի՛ պանդխտես-
ցի ի նմա որդի մարդոյ։
41 Ահաւասիկ գունդ գայ ի հիւսիսոյ, եւ
ազգ մեծ եւ թագաւորք բազումք
42 զարթիցեն ի ծագաց երկրէ։ Աղեղն եւ
վաղակաւոր ի ձեռին իւրում, ժպիրհ է
եւ մի՛ ողորմեսցի. ձայն նոցա իբրեւ
զծով գոչեսցէ. հեծեալք յերիվարս,
պատրաստեալք իբրեւ [15]զհուր ի պատե-
րազմ ի վերայ քո, դուստր Բաբելաց-
43 ւոց։ Լուաւ զլուր նոցա արքայն Բա-
բելացւոց, եւ լքան ձեռք նորա. նե-
ղութիւն տագնապեաց զնա, երկունք
44 իբրեւ ծննդականի։ Ահաւադիկ իբրեւ
զառեւծ ելցէ [16]ի յորձանացն Յորդա-
նանու ի տեղին Եթամայ. զի" երագ

բնակչացն Այցելութեան. աւերեա եւ կորդա նզովս զհետ նոցա [1]Եբր. յերկրին [2]Եբր. Լարեցի քեզ որոգայթ եւ ըմբռնեցար, Բաբելոն, եւ ոչ գիտացեր [3]Եբր. Ադոնայի Տեառն [4]Եբր. Եկայք առ նա ի ծագաց [5]Եբր. ընկեցէք իբրեւ զշեղջս [6]Եբր. Կորուսէք զամենայն զուարակս [7]Եբր. գլորեսցի հպարտն [8]Եբր. ի քաղաքս

[9]Եբր. Նոցա, զի խաղաղեսցէ զերկիրն, եւ խռովեցուսցէ զբնակիչս [10]Եբր. մոլեսցին [11]Յեբր. պակաս է [12]Եբր. Ցամաքութիւն [13]Եբր. ցամաքեսցին [14]Եբր. ի կուռս մոլին։ (39) Վասն այնորիկ բնակեսցեն կուզք ընդ բորենեաց [15]Եբր. զայր [16]Եբր. ի յորդութենէ Յորդանանու ի բնակութիւն ամրութեան, բայց

երագ հալածեսցին զնոսա ի նմանէ, եւ
[1]զամենայն երիտասարդս յարուցից ի վե-
րայ նորա՝՝. զի ո՞վ որ է իբրեւ զիս, եւ
ո՞վ ընդդէմ դառնայցէ ինձ, եւ ո՞վ [2]որ
45 հովիւ կայցէ ինձ հակառակ՝՝։ Վասն այ-
դորիկ լուարուք զխորհուրդ Տեառն զոր
խորհեցաւ ի վերայ Բաբելոնի, եւ զխոր-
հուրդս նորա զոր խորհեցաւ ի վերայ
բնակչաց Քաղդէացւոց. [3]Եթէ ո՛չ տապա-
կանիցեն զգառինս հօտից նոցա, եթէ
ո՛չ ապականեսցին ի նոցանէ արօտք.
46 Զի ի ձայնէ՝՝ կործանման Բաբելոնի
շարժեսցի երկիր, եւ զօյժ նորա լուիցի
ի հեթանոսս։

## Գլ. ԾԱ

1 Այսպէս ասէ Տէր. Ահաւասիկ ես յա-
րուցից ի վերայ Բաբելոնի եւ ի վերայ
[4]բնակչաց նորա զօդս յարուցելոց, եւ
2 հողմ խորշակի՝՝ ապականիչ։ Եւ առաքե-
ցից ի Բաբելոն [5]զօրականս եւ զտա-
ղեսցեն զնա, եւ ապականեսցեն զեր-
կիր նորա. զի վա՜յ ի վերայ Բաբելոնի
շուրջանակի յաւուր չարչարանաց իւ-
3 րոց։ Լարեսցէ որ լարեսցէ զաղեղն
իւր, եւ առցէ զանձամբ որ ինչ զէն՝՝.
մի՛ խնայէք յերիտասարդս նորա, եւ ա-
պականեսցէք զամենայն զօրութիւն նո-
4 րա։ Եւ անկցին վիրաւորք յերկրին
Քաղդէացւոց, եւ խոցոտեալք [6]շուրջ
5 զնովաւ՝՝. Զի ոչ այրի Իսրայէլ
եւ Յուդա յԱստուծոյ իւրեանց եւ ի
Տեառնէ ամենակալէ. [7]զի երկիր նոցա
լցաւ անօրէնութեամբ ի սրբութեանցն՝՝
6 Իսրայելի։ Փախերուք ի միջոյ Բաբե-
լոնի, եւ ապրեցուցէք իւրաքանչիւր
զանձն իւր, եւ մի՛ կործանիցիք յա-
նիրաւութեանց նորա. զի ժամանակ
վրէժխնդրութեան է նորա ի Տեառնէ,
զհատուցումն նորա ինքն հատուցէ։
7 Բաժակ ոսկի Բաբելոն ի ձեռին Տեառն,

[1] Եբր. ո՞վ իցէ ընտրեալն զոր կացուցից ի վերայ նորա
[2] Եբր. իցէ հովիւն որ ընդդէմ կայցէ երեսաց իմոց
[3] Եբր. Միթէ ո՞չ վանեսցեն զնոսա փոքունք հօտին, միթէ ո՞չ աւերեսցի ի վերայ նոցա բնակութիւն նոցա։ (46) Ի ձայնէ
[4] Եբր. բնակելոց ի մէջ թշնամեաց իմոց զհողմ
[5] Եբր. հոսողս և հոսեսցեն զնա, եւ արասցեն թափուր զերկիր նորա. զի եղիցին ի վերայ նորա յամենայն կողմանց յաւուր չարեաց։ (3) Լարեսցէ զաղեղն իւր աղեղնաւորն ընդդէմ աղեղնաւորի, եւ որոյ հպարտացեալն իցէ ի զրահս իւր. եւ
[6] Եբր. ի հրապարակս նորա
[7] Եբր. թէպէտեւ երկիր նոցա լցաւ անօրէնութեամբ ընդդէմ Սրբոյն

որ արբեցուցանէ զամենայն երկիր ի
գինւոյ իւրմէ. արբին հեթանոսք, վասն
8 այնորիկ [8]շարժեցան ազգք։ Յանկար-
ծակի կործանեցաւ Բաբելոն, եւ խոր-
տակեցաւ. ողբս առէք ի վերայ դորա,
առէք զեղ վիրաց դորա, թերեւս բժշ-
կեսցի։
9 Բժշկեցաք զԲաբելոն, եւ նա ոչ բժշ-
կեցաւ. Թողցուք զնա եւ գնասցուք
իւրաքանչիւր յերկիր իւր. զի մերձե-
ցան մինչեւ յերկինս դատաստանք նո-
րա, ամբարձան մինչեւ ցաստեղս։
10 [9]Եւ ած Տէր զդատաստան ի վերայ
նորա՝՝. եկայք եւ պատմեսցուք ի Սիոն
11 զգործս Տեառն Աստուծոյ մերոյ։ [10]Կազ-
մեցէք աղեղունս՝՝, լցէք զկապարճս. զի
զարթոյց Տէր զոգի [11]Թագաւորին Մա-
րաց. զի բարկութիւն՝՝ նորա ի վերայ
Բաբելոնի, եւ ջնջեսցէ զնա. զի վրէժ-
խնդրութիւն Տեառն է, վրէժխնդրու-
12 թիւն տաճարի նորա։ Ի վերայ պարսպացն
Բաբելոնի կանգնեցէք նշան, կացուցէք
պահապանս, զարթուցէք զառաջապահս,
պատրաստեցէք [12]զդէնս. զի ձեռն ի
գործ արար, եւ արասցէ Տէր՝՝ զոր ինչ
խօսեցաւ ի վերայ բնակչացն Բաբելոնի։
13 [13]Բնակեալդ առ ջուրսն բազումս, ի վե-
րայ բազմութեան գանձուց [14]նորա հա-
սեալ է վախճան քո, [15]արդարեւ առոյգ
14 ի փոր քո եմուտ։ Զի երդուաւ Տէր
զօրութեանց ի բազուկ՝՝ իւր, թէ Լցից
զքեզ զօրօք իբրեւ մարախով, եւ բար-
բառեսցին ի վերայ քո [16]որ իջանեն ի
քեզ՝՝։
15 Որ արար զերկիր զօրութեամբ իւ-
րով, պատրաստեաց զաշխարհս իմաս-
տութեամբ իւրով, ձգեաց զերկինս հան-
16 ճարով իւրով, Եւ ի բարբառ զբազմու-
թիւն ջուրց շառաչմանց յերկինս, եւ հանէ
ամպս ի ծագաց երկրէ, եւ զփայլա-
տակունս յանձրեւս արար, եհան [17]զլոյս
17 յշտեմարանաց իւրոց։ Յիմարեցաւ ա-
մենայն մարդ ի գիտութենէ. յամօթ ե-
ղեւ ամենայն ոսկերիչ ի դրօշելոց իւ-
րոց, զի սուտ ձուլեցին, չիք ոգի ի նո-

[8] Եբր. մոլեգնեցան [9] Եբր. Ի վեր եհան Տէր զարդարութիւն մեր [10] Եբր. շողացուցէք զնետս
[11] Եբր. թագաւորացն Մարաց. զի խորհուրդ
[12] Եբր. զարսն. զի ե՛ւ խորհեցաւ Տէր, ե՛ւ արար
[13] Եբր. Բնակեալդ [14] Յեբր. [illegible] [15] Եբր. չափ ագահութեան քո։ (14) Երդուաւ Տէր զօրութեանց յանձն [16] Եբր. աղաղակաւ [17] Եբր. զհողմ

18 սա։ Մնասի են, գործք ձաղանաց, ի
ժամանակի այցելութեան իւրեանց կո-
19 րիցեն։ Ոչ այնպէս ինչ իցէ Բաժինն
Յակոբայ. զի որ ստեղծ զամենայն՝ նա
է [1]բաժին նորա˝, եւ գաւազան ժառան-
գութեան նորա. Տէր զօրութեանց է
անուն նորա։
20 [2]Ցրուեսցես դու ինձ զանօթս պատե-
րազմիդ, եւ ցրուեցից ես ի քեզ զազգս.
եւ բարձից ի միջոյ քումմէ զթագաւորս,
21 Եւ ցրուեցից ի քեզ զայրուձի նորա, եւ
ցրուեցից ի վերայ քո˝ զկառս եւ զհե-
22 ծեալս նորա։ Եւ ցրուեցից [3]ի քեզ զայր
եւ զկին, եւ ցրուեցից [3]ի քեզ զծերն
եւ զերիտասարդն, եւ ցրուեցից [3]ի քեզ
23 զընտիրն եւ զկոյսն, Եւ ցրուեցից [3]ի
քեզ զհովիւն եւ զհօտ իւր, եւ ցրուե-
ցից [3]ի քեզ զհողագործն եւ [4]զհողագոր-
ծութիւն իւր˝, եւ ցրուեցից [3]ի քեզ զզօ-
24 րավարս եւ զզօրագլուխս [1]քո։ Եւ հա-
տուցից Բաբելոնի եւ բնակչաց Քաղ-
դէացւոցն ըստ ամենայնի չարեացն նո-
ցա զոր արարին ընդ Սիոն, առաջի ա-
25 չաց ձերոց, ասէ Տէր։ Ահաւասիկ ես ի
վերայ քո, լեառն ապականիչ, ասէ Տէր,
որ ապականէիր զամենայն երկիր. եւ
ձգեցից զձեռն իմ ի վերայ քո, եւ թա-
ւալեցուցից զքեզ ի վիմաց, եւ տաց
26 զքեզ ի լեառն այրեցեալ. Եւ ոչ եւս առ-
նուցուն ի քէն վէմ անկեան եւ վէմ հի-
ման. զի յապականութիւն յաւիտենից
27 եղիցես, ասէ Տէր։ Առէք նշան ի վե-
րայ երկրի, փող հարէք ընդ ազգս [1]ա-
մենայն, [5]հրաւիրեցէք ի վերայ դորա
[6]զազգս, պատուէր տուք յինէն Այրա-
րատեան թագաւորութեանցն եւ Ասքա-
նազեան գնդին. կանգնեցէք զնա-
վու նետակալս, ելէք ի վերայ. չար-
ժեցաւ եւ չարչարեցաւ, զի եկն եհաս
ի վերայ Բաբելոնի խորհուրդ Տեառն.
երկիրք իբրեւ զբազմութիւն մարա-
28 խոյ˝։ [5]Հրաւիրեցէք ի վերայ նորա [7]զազգս

եւ զթագաւորն˝ Մարաց, զզօրավարս
նորա եւ զամենայն զօրագլուխս [8]նոցա
անդր, եւ զամենայն երկրի զիշխանու-
29 թիւնս, Դնել˝ զերկիրն Բաբելացւոց
յապականութիւն. զի մի՛ լինիցի ի նմա
30 բնակութիւն։ Կասեցին նահատակքն
Բաբելոնի ի պատերազմէ, նստցին ի
պաշարման. բեկաւ զօրութիւն նոցա,
եւ եղեն իբրեւ զկանայս. հրձիգ եղեն
յարկք նորա, խորտակեցան նիգք նո-
31 րա։ Փախստեայ փախստէի պատահես-
ցէ, եւ գուժկան գուժկանի զխաղեսցի,
զոյժ տանել թագաւորին Բաբելացւոց,
թէ առաւ քաղաքն [9]նորա. ի ծագաց
32 եկից իւրոց ըմբռնեցան, Եւ ժողովք
նոցա˝ ի հուր այրեցան, եւ արք պա-
33 տերազմօղք [10]ի գլուխս զինեալն˝։ Զի
այսպէս ասէ Տէր զօրութեանց՝ Աստուած
Իսրայելի. [11]Տուն Բաբելացւոց իբրեւ
զօրան վակտանակ կասցի, ոտնակոխ մեւս
եւս, եւ հասցեն հունձք նորա։
34 Եկեր զիս, [12]եհաս ի վերայ իմ, բաժա-
նեաց˝ զիս Նաբուքոդոնոսոր արքայ Բա-
բելացւոց. կացոյց զիս իբրեւ զաման
մի ունայն, եկուլ զիս իբրեւ զվիշապ,
եկից զկուշտ իւր ի փափկութենէ [13]իմ-
35 մէ։ Մերժեցան վաստակք իմ, եւ տա-
ռապանք իմ ի Բաբելոն գնացին˝, ա-
սասցէ բնակիչն Սիոնի. եւ արիւն իմ
ի վերայ բնակչացն Քաղդէացւոց, ա-
36 սասցէ Երուսաղէմ։ Վասն այդորիկ
այսպէս ասէ Տէր. Ահաւասիկ ես դա-
տեցայց զդատն քո, եւ խնդրեցից զվրէժ
քո, եւ աւերեցից զծով նորա, եւ ցա-
37 մաքեցուցից զաղբիւրս նորա։ Եւ եղի-
ցի Բաբելոն ի բլուր՝ բնակութիւն վի-
շապաց, յապականութիւն եւ ի չքիւն,
38 եւ մի՛ բնակեսցի։ Համօրէն իբրեւ ա-
ռիւծունք [14]պատրաստեցան որդիք նո-
ցա, եւ˝ իբրեւ զկորիւնս առիւծուց։
39 [15]Ի ջերմն խշտեայ իւրեանց տաց նոցա
արհաւիրս˝, եւ արբեցուցից զնոսա. զի
թմբրեսցին եւ ննջեսցեն քուն յաւիտե-

---

[1] Յեբր. դ—ի—ն [2] Եբր. Մուրճ ես դու ինձ, անօթ պատերազմի, եւ ցրուեցից քեւ զազգս, եւ խորտակեցից քեւ զթագաւորութիւնս, (21) Եւ ցրուեցից քեւ զձին եւ զհեծեալ նորա, եւ ցրուեցից քեւ [3] Եբր. քեւ [4] Եբր. զհարկիս եզանց նորա [5] Եբր. սրբեցէք յամ, Նուիրեցէք [6] Եբր. զազգս. կոչեցէք ի վերայ դորա զթագաւորութիւնս Արարատայ, Մինւոյ եւ Ասքանազայ, կացուցէք ի վերայ նորա զօրագլուխ, հանէք ի վերայ նորա զերիվարս իբրեւ զմորեխ մազեղ [7] Եբր. զազգս, զթագաւորս

[8] Եբր. նորա, եւ զամենայն երկիր իշխանութեան նորա։ (29) Եւ դղրդեսցի երկիրն եւ տագնապեսցի, զի հաստատեցան ի վերայ Բաբելոնի խորհուրդք Տեառն, դնել [9] Եբր. նորա ի ծագաց.(32) Եւ անցք ըմբռնեցան եւ եղեգունք [10] Եբր. զարհուրեցան [11] Եբր. Դուստր [12] Եբր. ջախջախեաց [13] Եբր. իմմէ, մերժեաց զիս։ (35) Զրկանք իմ եւ տառապանք իմ ի վերայ Բաբելոնի [14] Եբր. մռնչեսցեն, գոչեսցեն [15] Եբր. Ի ջեռնուլ նոցա եդից զխրախուն նոցա

40 նից, եւ մի՛ զարթիցեն, ասէ Տէր։ [1]Իջօ
զնոսա իբրեւ զոչխարս ի սպանումն, եւ
իբրեւ զխոյս այծեօք հանդերձ։
41 Զի՛արդ [2]ի պարտութիւն մատնեցաւ,
Սեսակ, եւ անկաւ" յորս՝ պարծանքդ
ամենայն երկրի. զի՛արդ եղեւ Բաբելոն
յապականութիւն ի մէջ ամենայն ազ-
42 գաց։ Ել ի վերայ Բաբելոնի ծովն, պոչ-
43 մամբ ալեաց իւրոց ծածկեցաւ։ Եղեն
քաղաքք նորա յապականութիւն, յեր-
կիր անջուր եւ յանապատ, եւ մի՛ ոք
իցէ որ բնակեսցէ ի նմա, եւ ոչ [3]հան-
44 գիցէ ի նմա" որդի մարդոյ։ Եւ խնդրե-
ցից զվրէժ ի Բելայ ի Բաբելոն, եւ հա-
նից զոր եկուլն ի բերանոյ նորա, եւ
մի՛ եւս ժողովեսցին առ նա ազգք. նա
45 եւ պարիսպքն Բաբելացւոց անկան։ Ե-
լէք ի միջոյ նորա, ժողովուրդ իմ, եւ
ապրեցուցէք իւրաքանչիւր զանձինս ձեր
ի սրտմտութենէ բարկութեան Տեառն։
46 Մի՛ երբեք զանգիտիցեն սիրտք ձեր,
եւ մի՛ երկնչիք ի համբաւոյ զոր լսի-
ցէք յերկրին. զի ի նմին տարւոջ մացէ
լուրն, եւ յետ այնր տարւոյ՝ այլ լուր,
եւ անիրաւութիւն յերկրին, [4]առակ ի
վերայ առակի"։
47 Վասն այնորիկ ահա աւուրք գան,
ասէ Տէր, եւ արարից հանդէս ի վերայ
դրօշելոյն Բաբելացւոց, եւ ամենայն
երկիր նորա ամաչեսցէ, եւ ամենայն
վիրաւորք նորա անկցին ի միջի նորա։
48 Եւ ցնծասցեն ի վերայ Բաբելոնի եր-
կինք եւ երկիր եւ ամենայն որ ի նոսա.
զի ի հիւսիսոյ եկեսցեն թշուառացու-
49 ցիչք նորա, ասէ Տէր։ [5]Եւ ի Բաբելոն
անկցին վիրաւորք ամենայն երկրին։
50 Ելէք, ապրեալք [6]յերկրէդ, մի՛ կայք.
յիշեցէք զՏէր, հեռաւորքդ, եւ Երու-
սաղէմ անկցի ի սիրտ ձեր։
51 Ցամօթ եղաք, զի լուաք զնախա-
տինս [7]մեր, ծածկեցին անարգանք զե-
րեսս մեր, մտին այլազգիք ի սրբութիւնս
52 [7]մեր ի" տան Տեառն։ Վասն այդորիկ ահա
աւուրք գան, ասէ Տէր, եւ խնդրեցից
զվրէժ ի դրօշելոց նորա, եւ յամենայն
53 երկրի [8]անկցին վիրաւորք։ Եւ եթէ
բարձրասցի Բաբելոն իբրեւ զերկինս,
եւ եթէ ամրասցուսցէ զբարձրութիւն
զօրութեան իւրոյ, յինէն եկեսցեն նմա
54 սատակիչք, ասէ Տէր։ Ձայն գուժի ի
Բաբելոն, եւ բեկումն մեծ յերկրին
55 Քաղդէացւոց. Զի սատակեաց Տէր զԲա-
բելոն, եւ կորոյս ի նմանէն զձայն մեծ,
[9]զգոչիւն ալեաց իւրոց, իբրեւ ջուրք
բազումք եւտուն զբարբառ սատակման
56 նորա"։ Զի եկն ի վերայ [10]Բաբելոնի
թշուառութիւն", ըմբռնեցան տապա-
ռէնքն նորա, [11]զարհուրեցան աղեղնա-
ւորքն նորա", զի Աստուած հատուցիչ
է, ինքն Տէր հատուցանէ նմա զհա-
57 տուցումն։ Եւ [12]արբեցուսցէ արբեցու-
թեամբ զզօրավարս նորա եւ զիմաս-
տունս նորա, զիշխանս նորա եւ զզօ-
րագլուխս նորա եւ զզօրաւորս նորա,
եւ ննջեսցեն քուն յաւիտենից, եւ մի՛
զարթիցեն, ասէ Արքայ՝ Տէր ամենա-
58 կալ անուն է նորա։ Այսպէս ասէ Տէր
զօրութեանց. Պարիսպն Բաբելոնի [13]լայ-
նեցաւ, կործանելով կործանեսցի, եւ
դրունք նորա բարձունք հրով այրես-
ցին. եւ ջանասցին ժողովուրդք ընդու-
նայն, եւ [14]ազգ ի սկզբան սատակեսցին"։
59 Բանն զոր պատուիրեաց [15]Տէր Երե-
միայի մարգարէի ասել ցՍարեա որդի"
Ներեայ՝ որդւոյ Մաասեայ, յորժամ եր-
թայր [16]ի Սեդեկիայ արքայէ" Յուդայ ի
Բաբելոն, յամին չորրորդի թագաւորու-
թեան նորա. եւ Սարեա էր [17]պարգե-
60 ւատու նորա։ Եւ գրեաց Երեմիա զա-
մենայն չարիս որ գալոց էին ի վերայ
Բաբելոնի ի մատեանի միում, զամենայն
զբանս զայսոսիկ գրեալս ի վերայ Բաբե-
61 լոնի։ Եւ ասէ Երեմիա ցՍարեա, Յոր-
ժամ երթայցես ի Բաբելոն, եւ տեսցես
եւ ընթեռնուցուս զամենայն զբանս
62 զայդոսիկ, Եւ ասասցես, Տէր դու խօ-
սեցար ի վերայ տեղւոյս այսորիկ սա-
տակել զսա, մի՛ եւս լինել ի սմա բնա-
կիչ ի մարդոյ մինչեւ յանասուն. զի յա-
63 պականութիւն յաւիտենից եղիցի։ Եւ
եղիցի յորժամ դադարեսցես յընթեռնլոյ
զմատեանդ զայդ, կապեսցես ի դմա քար

[1] Եբր. Իջուցից [2] Եբր. առաւ Սեսակ. և անկաւ [3] Եբր. անցանէ ընդ նա [4] Եբր. իշխան ի վերայ իշխանի [5] Եբր. Որպէս Բաբելոն ընկեց զվիրաւորս Իսրայէլի, այնպէս [6] Եբր. ի սրոյ [7] Յեբր. պակասէ [8] Եբր. նորա հեծեսցեն

[9] Եբր. եւ խռովեսցին ալիք նոցա իբրեւ զջուրս բազումս. հնչեաց բարբառ նոցա [10] Եբր. նորա, ի վերայ Բաբելոնի աւերիչ [11] Եբր. խորտակեցաւ աղեղն նոցա [12] Եբր. արբեցուցից [13] Եբր. լայն [14] Եբր. ազգք՝ վասն հրոյն աշխատ լիցին եւ խոնջեսցին [15] Եբր. Երեմիա մարգարէ Սարեայ որդւոյ [16] Կամ, ընդ Սեդեկեայ արքայի [17] Եբր. սենեկապետ

64 եւ ընկեսցես ի մէջ Եփրատայ. Եւ ա-
սասցես, Այսպէս ընկղմեսցի Բաբելոն,
եւ մի՛ կանգնեսցի ի չարեացն զոր ես
ածից ի վերայ նորա[1]։
[2]Եւ կացին" մինչեւ ցայս վայր բանք
Երեմեայ մարգարէի։

## Գլ. ԾԲ

1 Քսան եւ մի ամաց էր Սեդեկիա ար-
քայ ի թագաւորել իւրում, եւ մետա-
սան ամ թագաւորեաց յԵրուսաղէմ, եւ
անուն մօր նորա Ամատեղ դուստր Ե-
2 րեմեայ ի Ղոբնայ։ Եւ արար չար ա-
ռաջի Տեառն, որպէս արար Յովակիմ։
3 Զի ի ցասումն Տեառն էր Երուսաղէմ
եւ Յուդա, մինչեւ մերժեաց զնոսա
յերեսաց իւրոց. եւ ապստամբեաց Սե-
դեկիա յարքայէն Բաբելացւոց։
4 Եւ եղեւ յիններորդի ամի թագաւո-
րութեան նորա, եւ յամսեանն տասնե-
րորդի՝ որ օր տասն էր ամսոյն, եկն
Նաբուքոդոնոսոր արքայ Բաբելացւոց
ամենայն զօրօք իւրովք յԵրուսաղէմ,
եւ պաշարեաց զնա. եւ [3]շինեաց շուրջ
զնովաւ պարիսպ առ պարիսպ՝ ի չորեք-
5 կուսի վիմաց"։ Եւ եհաս քաղաքն ի
նեղութիւն մինչեւ յամն մետասանե-
6 րորդ Սեդեկիայ արքայի։ Եւ յամսեանն
չորրորդ՝ որ օր իննն էր ամսոյն, եւ զօ-
րացաւ սով ի քաղաքին. եւ ոչ գտա-
նէր հաց ուտելոյ ժողովրդեան երկրին։
7 Եւ խրամատեցաւ քաղաքն, եւ ամե-
նայն արք պատերազմօղք փախեան,
եւ ելին ի քաղաքէ անտի ի գիշերի ընդ
ճանապարհ դրանն [4]ընդ պարիսպ եւ ընդ
պատուհան", ընդ կողմն պարտիզին ար-
քունի, եւ Քաղդէացիքն շուրջ զքա-
ղաքաւն էին. եւ գնացին ընդ ճանա-
8 պարհ [5]Արաբացւոց։ Եւ զհետ եղեն
զօրք թագաւորին Քաղդէացւոց", եւ
հասին Սեդեկիայ արքայի [6]յանդս Երի-
քովի, եւ ամենայն [7]ծառայք նորա
9 ցրուեցան ի նմանէ։ Եւ կալան զթա-
գաւորն եւ ածին առ արքայն Բաբե-
լացւոց ի Ռեբղաթա յերկիրն Եմաթայ,
եւ խօսեցաւ ընդ նմա դատաստանօք։
10 Եւ կոտորեաց արքայն Բաբելացւոց
զորդիսն Սեդեկիայ յանդիման նորա,
եւ զամենայն իշխանս Յուդայ կոտո-
11 րեաց ի Ռեբղաթա. Եւ զաչսն Սեդե-
կիայ կուրացոյց, եւ կապեաց զնա ձե-
ռակապօք, եւ տարաւ զնա արքայն
Բաբելացւոց ի Բաբելոն, եւ եդ զնա,
ի տուն [8]աղօրեաց մինչեւ յօր մահուան
իւրոյ։
12 Եւ յամսեանն հինգերորդի, որ օր տասն
էր ամսոյն, այն ամ իններեւտասն էր Նա-
բուքոդոնոսորայ արքային Բաբելացւոց,
եկն Նաբուզարդան դահճապետ որ կայր
13 առաջի արքային Բաբելացւոց[9], Եւ
հրձիգ արար զտունն Տեառն եւ զապա-
րանսն արքունի, եւ զամենայն տունս
քաղաքին եւ զամենայն ապարանս մե-
14 ծամեծս այրեաց հրով։ Եւ զամենայն
պարիսպն Երուսաղեմի շուրջանակի ա-
մենայն զօրք Քաղդէացւոց քակեցին,
15 որ էին ընդ դահճապետին։ Բայց յաղ-
քատաց ժողովրդեանն եւ ի մնացորդաց,
եւ զմնացորդսն որ մնացին ի քաղաքին,
եւ զփախստականս որ փախեան առ ար-
քայն Բաբելացւոց, եւ զմնացորդս ժո-
ղովրդեանն [10]եթող Նաբուզարդան դահ-
16 ճապետ։ Եւ յաղքատաց երկրին եթող
Նաբուզարդան դահճապետ յայգեգործս
եւ յարդիւնարարս։
17 Եւ զսիւնսն պղնձիս տան Տեառն եւ
[11]զխարիսխսն, եւ զծովն պղնձի որ էր
ի տան Տեառն՝ խորտակեցին Քաղդէա-
ցիքն, եւ խաղացուցին զամենայն պղինձն
18 ի Բաբելոն։ Եւ [12]զսանն եւ զկերնախա-
րիխսն եւ զպնակսն եւ զաղաչսն եւ
զմահանանսն", եւ զամենայն կահ պղնձի
19 որովք պաշտէին նովաւ՝ [13]առ. Եւ զսափ-
փոլթն եւ զամսատարակովթ եւ զպար-
զուան" եւ զաշտանակսն եւ զճաշակսն
եւ զտուփսն, որ ոսկի՝ ոսկի, եւ որ
20 արծաթի՝ արծաթի, առ դահճապետն։ Եւ
սիւնք երկու էին, եւ ծով մի, եւ ցուլքն
երկոտասան էին [14]որ կային ընդ ծովաւն",
զորս արար արքայ Սողոմոն ի տան
Տեառն, եւ ոչ գոյր չափ [2]պղնձոյն եւ"

---

[1]Ոմանք յաւելուն, եւ խոնջեսցին [2]Յոմանս. պակասէ [3]Ոմանք. շինեցին հանդէպ նորա պատնէշ շուրջանակի [4]Ոմանք. ընդ մէջ երկուց պարսպացն [5]Ոմանք. դաշտին. (8) Եւ պնդեցան զօրք Քաղդէացւոցն զկնի թագաւորին [6]Ոմանք. ի դաշտան [7]Ոմանք. զօրք

[8]Ոմանք. ոստիկանացն [9]Ոմանք յաւելուն, յԵրուսաղէմ [10]Ոմանք. գերեաց [11]Ոմանք. զմեքենովթսն [12]Ոմանք. զանօթս մախրոյն և զբահս եւ զբազմակալս եւ զկոնքս եւ զխնկամանս [13]Ոմանք. առին։ (19) Եւ զբաժակսն եւ զբուրուառսն եւ զպարզուսն եւ զանօթս մախրոյն [14]Ոմանք. պղնձիք որ կային ընդ մեքենովթիւքն

21 ամենայն կահին պղնձոյ։ Եւ սեանցն՝
[1]երեսուն եւ հինգ" կանգուն էր բարձ-
րութիւն միոյ միոյ սեան, եւ մանեակ
յերկոտասան կանգնոյ շուրջ զնովաւ,
եւ թանձրութիւն նորա շուրջ առ չորս
22 [2]մատունս. Եւ խոյակապէսք նորա
պղնձիք, եւ բարձրութիւն միոյ խո-
յակապիսին՝ ի հինգ կանգնոյ, եւ վան-
դակապատք եւ նռնաձեւք ի վերայ խո-
յակապիսին շուրջ զրջանակաւ՝ ամե-
նայն պղնձի. ըստ նմին օրինակի եւ
երկրորդի սեանն, [3]ութ նռնաձեւ, կան-
գուն առ կանգուն, յերկոտասան կանգ-
23 նոյ"։ Եւ էին նռնաձեւք իննսուն եւ
վեց [4]ի միոջէ կողմանէ", եւ էին ա-
մենայն նռնաձեւքն հարիւր ի վերայ
վանդակին շուրջանակի։
24 Եւ առ դահճապետն զՍարայիա զքա-
հանայ զգլխաւորն, եւ զՍոփոնիա զքա-
հանայ զերկրորդ, եւ երիս դռնապանս.
25 Եւ ի քաղաքէ անտի առ ներքինի մի՝ որ
էր ստիկան արանց պատերազմողաց,
եւ եւթն այր անուանի որ կային ա-
ռաջի թագաւորին՝ գտեալ ի քաղա-
քին. եւ զդպրապետն զիշխան զօրացն,
[5]եւ զդպրապետ ժողովրդեան" երկրին,
եւ վաթսուն այր ի ժողովրդենէ երկ-
26 րին՝ որ գտան ի քաղաքին։ Եւ առ զնո-
սա Նաբուզարդան դահճապետ, եւ տա-
րաւ առ արքայն Բաբելացւոց ի Դեբ-
27 ղաթա։ Եւ եհար զնոսա արքայն Բա-
բելացւոց, եւ սպան զնոսա ի Դեբ-
ղաթա յերկրին Եմաթայ։ Եւ գերեցաւ
Յուդա անդուստ յերկրէ իւրմէ։
28 Եւ այս ժողովուրդ է զոր գերեաց Նա-
բուքոդոնոսոր արքայ. յամին եւթնե-
րորդի, ի Հրէից՝ երիս հազարս եւ քսան
29 եւ երեք. Եւ յամին ութուտասանե-
րորդի Նաբուքոդոնոսորայ՝ տարան յԵ-
րուսաղեմէ ոգիս ութ հարիւր երեսուն
30 եւ երկուս. Եւ յամին քսաներորդի եւ
երրորդի Նաբուքոդոնոսորայ՝ խաղացոյց
Նաբուզարդան դահճապետ ի Հրէից ո-
գիս եւթնհարիւր քառասուն եւ հինգ.
ընդ ամենայն ոգիք չորք հազարք եւ
վեց հարիւր։
31 Եւ եղեւ յերեսներորդի եւթներորդի
ամի գերութեան Յովաքիմայ արքայի
Յուդայ, յերկոտասաներորդ ամսեանն ի
քսան եւ [6]ի չորս ամսոյն, բարձրացոյց
Եւիլմարովդաք արքայ Բաբելացւոց՝ յա-
մին յորում թագաւորեաց՝ զգլուխ Յո-
վաքիմայ արքայի Յուդայ. եւ եհան
զնա ի տանէն ուր կայր ի պահեստի.
32 Եւ խօսեցաւ ընդ նմա քաղցրութեամբ,
եւ արկ զաթոռ նորա ի վերոյ քան զա-
թոռս թագաւորացն որ էին ընդ նմա ի
33 Բաբելոն. Եւ փոխեաց զպատմուճան
բանտի նորա, եւ ուտէր հաց հանապազ
առաջի նորա զամենայն աւուրս որչափ
34 եւ եկեաց։ Եւ կարգեցաւ նմա ռոճիկ
հանապազորդ, զոր տային յարքայէն
Բաբելացւոց օր ըստ օրէ մինչեւ յօր
[7]մահու՝ զամենայն աւուրս կենաց իւրոց։

[1] Եբր. ութեւտասն [2] Եբր. մատունս՝ գո-գաւոր [3] Եբր. եւ նռնաձեւք [4] Եբր. ի կողմանց [5] Եբր. որ կլթէր ի զինուորութիւն զժողովուրդ

[6] Եբր. ի հինգ [7] Եբր. մահու նորա

# ՈՂԲՔ ¹ՍՐԲՈՅՆ
# ԵՐԵՄԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

## ԳԼՈՒԽ Ա

*¹Եւ եղեւ յետ գերութեանն Իսրայէլի եւ աւերածոյն Երուսաղեմի, նստէր եւ լայր եւ ողբայր Երեմիա զողբս զայս ի վերայ Երուսաղեմի եւ ասէր."*

1 ԶԻԱ՛ՐԴ զատաւ նստաւ միայնակ
քաղաքն բազմաժողով, եւ եղեւ
իբրեւ կին մի այրի ²լցեալ արտմու-
թեամբ" ի մէջ հեթանոսաց. իշխանն
2 ³աշխարհի եղեւ հարկատու։ Լալով ե-
լաց ի գիշերի, եւ արտասուք իւր ի վե-
րայ ծնօտից իւրոց, եւ ոչ գտաւ մխի-
թարիչ նմա ¹յայնմ աւուր" ի սիրելեաց
իւրոց. ամենայն բարեկամք նորա ⁴ա-
նարգեցին զնա, եւ եղեն նմա իբրեւ
3 թշնամիք։ Վարեցաւ ի գերութիւն Յու-
դա, ⁵ի բազում տառապանս, ի նեղու-
թեան, տրկութեան, ծառայութեան".
Նստաւ ի մէջ հեթանոսաց, եւ ոչ եգիտ
հանգիստ. ամենայն հալածիչք իւր հա-
4 սին նմա ի մէջ ⁶թշնամեաց իւրաց։ Սուգ
առին ճանապարհք Սիոնի, զի ոչ գոյր
երթեւեկ ամնից տարեկանաց նորա. ա-
մենայն դրունք նորա եղեն յապակա-
նութիւն, եւ քահանայք նորա ¹հաչեն
հառաչեն եւ" յազգաց հանեն. կուսանք
նորա ⁷ի գերութիւն վարեցան", եւ ինքն
5 դառնացեալ յանձն իւր։ Եւ եղեն նե-
ղիչք նորա ի գլուխ, եւ թշնամիք նո-
րա ⁸յաջողութիւն. զի Տէր կորացոյց
զնա վասն բազում ամպարշտութեան
նորա. տղայք նորա վարեցան ի գե-
6 րութիւն առաջի նեղչաց նորա։ Բար-
ձաւ ի դստերացն Սիոնի ամենայն վա-
յելչութիւն նոցա. եղեն իշխանք նոցա
իբրեւ ⁹խոյք՝ որոց ոչ գտանէր նոցա
ճարակ, ¹⁰երթան զցանկալի ցանկալի
ինչս իւրեանց՝ կերակրոց, զի հանգուս-
ցեն զանձինս իւրեանց. երթային եւ ոչ
ի միտս իւրեանց՝ առաջի նեղչաց ըստ
7 վարել հալածչացն։ Յիշեաց Երուսա-
ղէմ զօր տառապանաց եւ զօր ան-
ջատման իւրոյ. թախծեցաւ ընդ ամե-
նայն" ցանկալի ինչս զոր ստացեալ էր
ի սկզբանէ, յանկանել ժողովրդեանն ի
ձեռս թշնամեացն, եւ ոչ ոք էր որ օգ-
նէր նմա. տեսին ատելիք նորա, ¹ատե
հարին" եւ ծիծաղեցան ի վերայ ¹¹գե-
8 րութեան նորա։ Մեղս մեղաւ Երուսա-
ղէմ, վասն այսորիկ¹² ամենայն գովիչք
նորա կալ ի գլուխ անէծին զնա. զի
տեսին զանարգանս նորա, զի նա ինք-
9 նին յետս դարձեալ յուլաց եղանէր։ Պղծու-
թիւն նորա ¹³առաջի ոտից իւրոց", եւ
ոչ յիշեաց նա զյետինս իւր. ¹⁴իջոյց
արտասուս մեծամեծս", եւ ոչ ոք էր որ
մխիթարէր զնա. տես, Տէր, զտառա-
պանս իմ, զի բարձրացան թշնամիք իմ
10 ի վերայ իմ։ Զձեռն իւր ձգեաց նեղիչն
ի վերայ ցանկալեաց ¹⁵իմոց. տեսի ես
զհեթանոսս զի մտին ի սրբութիւն քո",
որոց պատուիրեցեր թէ մի՛ մտցեն ի
11 տեղի ժողովրդեան քոյ։ Ամենայն ¹⁶ժողո-
վուրդք յուլաց եղանէին ի խնդիր հացի,
տային զամենայն ցանկալի ինչս իւրեանց
ի գինս հացի, զի դարձուսցեն զանձինս
իւրեանց յինքեանս. տես, Տէր, եւ
12 հայեաց, զի եղէ ես անարգեալ։ Զեզ
ասեմ, ձեզ ասեմ, անցաւորք ճանա-
պարհաց, դարձայք հայեցարուք եւ տե-
սէք, թէ իցէ՞ն երբեք ցաւք ըստ
ցաւոց լեալ՝ որ ի վերայ իմ հասին.

¹ Յեբր. [illegible] ²Եբր. որ մեծն էր ³Եբր. ի գաւառս ⁴Եբր. գաւաճանեցին ⁵Եբր. ի տառապանս եւ ի բազում ծառայութիւն ⁶Եբր. նեղութեանց ⁷Եբր. տրտմեալ են ⁸Կամ, բարեճշան ⁹Եբր. եղջերուք

¹⁰Եբր. և վարեցան անզօրք առաջի հալածչաց։(7) Յիշեաց Երուսաղէմ զաւուրս տառապանաց իւրոց եւ թշուառութեան իւրոյ, զամենայն ¹¹Եբր. կորստեան ¹²Եբր. [illegible], վտարանդի եղեւ. ¹³Եբր. ի քղանցս նորա ¹⁴Եբր. նկուն եղեւ չարաչար ¹⁵Եբր. նորա. զի ետես զհեթանոսս որ մտին ի սրբութիւն նորա ¹⁶Եբր. ժողովուրդք նորա

[1]բարքառեցաւ յիս Տէր, եւ կորացոյց զիս՚՚
յաւուր բարկութեան սրտմտութեան
13 իւրոյ ։ Ի բարձանց [2]իւրոց առաքեաց
հուր յոսկերս [3]իմ. ցանց ձգեաց ոտից
իմոց, եւ դարձոյց զիս յետս իմ. ա-
րար յապականութիւն զանձն իմ, զօր-
հանապազ ի տառապանս սրտմութեան։
14 [4]Կանխեաց Տէր ի վերայ ամպարշտու-
թեան իմոյ, եւ արկ զինեւ զձեռն իւր.
ծանրացոյց զլուծ իւր ի վերայ պարա-
նոցի իմոյ՚՚, տկարացաւ զօրութիւն իմ.
մատնեաց զիս Տէր ի ձեռս [5]ցաւոց ի-
15 մոց, եւ ոչ կարեմ հանդարտել։ Զնջեաց
ի միջոյ իմմէ զընտիր ընտիր զօրաց ի-
մոց. կոչեաց ի վերայ ընտրելոց իմոց
ժամանակ բեկման՚՚. հնձան եհար Տէր
16 կուսի դստերն Յուդայ։ Վասն այսորիկ
ես անհաւանիկ ի լալ մասուցեալ եմ.
ակն [6]իմ իջոյց արտասուս, զի հեռի [7]ե-
ղեն յինէն մխիթարիչք՚՚ իմ, որ դար-
ձուցանէ զանձն իմ յիս. մատնեցան որ-
դիք իմ յապականութիւն, զի զօրացաւ
17 թշնամին։ Տարածեաց Սիոն զբազուկս
իւր սա Աստուած՚՚, եւ ոչ ոք էր որ
մխիթարէր զնա. [8]շուրջ զնովաւ նեղիչք
նորա՚՚. եղեւ Երուսաղէմ աղտեղեալ
18 իբրեւ կին մի ի մէջ նոցա։ Արդար է
Տէր Աստուած, զի ես դառնացուցի
զնա. լուարուք զայս, ամենայն ժողո-
վուրդք, եւ տեսէք զցաւս իմ. օրիորդք իմ
եւ երիտասարդք իմ վարեցան ի գերու-
19 թիւն։ Կոչեցի ես զսիրելիս իմ, եւ նոքա
արհամարհեցին զիս. քահանայք իմ եւ
երիցունք իմ ստէն ի քաղաքիս սատա-
կեցան. խնդրեցին կերակուր զի դար-
ձուսցեն զոգիս իւրեանց, եւ ոչ գտաւ՚՚
20 Տես, Տէր, զի նեղեալ եմ. [9]աղիք իմ
խռովեցան, սիրտ իմ դեղաւ յիս, [10]եւ
ես դառն դառնացեալ՚՚. արտաքուստ
անժառանգեաց զիս սուր, որպէս եւ
21 մահ ի ներքուստ։ [11]Լուարուք, լուարուք
զայս՚՚ զի ես հեծեմ հառաչեմ, եւ ոչ
ոք է որ մխիթարէ զիս. ամենայն թշնա-
միք իմ լուան զչարիս իմ եւ ոռն հա-
րին ինձ. զի դու [12]արարեր զօրն զայն,
եւ դու կոչեցեր զժամանակն զայն,
22 եւ եղեւ ինձ վա՜յ վայ։ Մտցեն չարիքն
ամենայն՚՚ առաջի քո, եւ ճառաքաղ արա
դու զնոսա, զոր օրինակ արարեր ճառ-
քաղ զիս ի վերայ ամենայն մեղաց ի-
մոց. զի բազում եղեն հեծութիւնք իմ,
եւ սիրտ իմ լի եղեւ տրտմութեամբ։

## Գլ. Բ

1 Զիա՞րդ [13]խաւարեցաւ սրտմտութեամբ
բարկութեան Տեառն դուստր՚՚ Սիոնի.
ընկէց յերկնից յերկիր զփառս Իսրա-
յէլի, եւ ոչ յիշեաց զպատուանդան ո-
տից իւրոց յաւուր սրտմտութեան բար-
2 կութեան իւրոյ։ Ընկլոյզ Տէր յանխնայ
զամենայն [14]զեղ Յակոբայ. քակեաց եւ
ոչ անխնայեաց՚՚ զամուրս դստերն Յու-
դայ, կործանեաց յերկիր. [15]անարգեաց
3 զիշխանս եւ զթագաւորս նոցա։ Փշրեաց
Տէր յաւուր սրտմտութեան բարկու-
թեան իւրոյ՚՚ զամենայն եղջեւրս Իս-
րայէլի, եւ դարձոյց յետս զաջ [16]նո-
րա առաջի թշնամեաց նորա՚՚. հուր
դատեաց զՅակոբ, հաչեաց եւ մաշեաց
4 զամենայն որ շուրջ էր զնովաւ։ Մուտ
ընդ զիրկս իւր իբրեւ զթշնամի. հաս-
տատեաց զաջ իւր [17]ի վերայ նորա, եւ
սպան զամենայն ցանկալիս դստեր Սիո-
նի. հեղ ի վերայ նորա զսրտմտութիւն
5 բարկութեան իւրոյ հրով՚՚։ Եղեւ Տէր
իբրեւ թշնամի [18]եւ կործանեաց զԻսրա-
յէլ. կործանեաց զթագաւորս՚՚ նորա,
կործանեաց զամենայն ամուրս նորա.
եւ բազմացոյց դստերն Յուդայ տառա-
6 պանս ի վերայ տառապանաց։ [19]Խլեաց
իբրեւ զայգի զխորանս նորա, եւ ա-
պականեաց զտօն տարեկանաց նորա.
մոռացաւ Տէր զոր արար Սիոն տօնս

[1]Ոմանք. զի կորացոյց զիս Տէր [2]Յոմանք. պակասէ [3]Ոմանք. իմ եւ տիրեաց նոցա [4]Ոմանք. Կապեցաւ լուծ անօրէնութեանց իմոց ի ձեռին նորա. հիւսեցան եկին ի պարանոց իմ [5]Ոմանք. նոցա, եւ ոչ կարեմ յառնել։ (15) Տապաստ արկ զամենայն հզօրս իմ ի միջի իմում. կոչեաց ի վերայ իմ ժողով կոտորել զերիտասարդս իմ [6]Ոմանք. իմ. ակն իմ [7]Ոմանք. եղեւ յինէն մխիթարիչն [8]Ոմանք. պատուիրեաց Տէր վասն Յակոբայ, զի թշնամիք նորա պատեսցեն շուրջ զնովաւ [9]Ոմանք. աղիք [10]Ոմանք. զի ապստամբելով ապստամբեցայ [11]Ոմանք. Լուան

[12]Ոմանք. արարեր. ածցես զօրն զոր կոչեցեր, և եղիցին իբրեւ զիս։ (22) Մտցեն ամենայն չարիք նոցա [13]Ոմանք. խաւարեցոյց ի բարկութեան իւրում Տէր զդուստր [14]Ոմանք. խորանս Յակոբայ. քակեաց սրտմտութեամբ իւրով [15]Ոմանք. պղծեաց զթագաւորութիւնն եւ զիշխանս նորա։ (3) Փշրեաց ի բարկութիւն սրտմտութեան [16]Ոմանք. իւր առաջի թշնամեաց [17]Ոմանք. իբրեւ զթշնամի. եւ սպան զամենայն ցանկալիս աչաց. ի խորանի դստեր Սիոնի հեղ իբրեւ զհուր զբարկութիւն իւր [18]Ոմանք. եկուլ զԻսրայէլ, եկուլ զամենայն ապարանս [19]Ոմանք. Յրուեաց իբրեւ զհիւղ մրգապահաց զտաղաւար նորա, ապա-

տարեկանաց եւ զշաբաթս . եւ զայրա-
ցոյց ի մանչել բարկութեան իւրոյ զթա-
գաւորս եւ զիշխանս եւ զքահանայս ։"
7 Մերժեաց Տէր զսեղան իւր, եւ ի բաց
ընկէց զսրբութիւնս իւր . [1]կործանեաց
զպարիսպս աշտարակեայս տաճարաց
նորա . ձայն ետուն՝ գաչեցին ի տան
Տեառն իբրեւ յաւուրս տօնից [2]տարե-
8 կանաց նորա ։ Ընկեցաւ կործանել
պարիսպ դստեր Սիօնի . չափ արկին
եւ ոչ անդրէն դարձուցին զձեռս ի-
րեանց . սուգ առին մահարձանք, եւ
պարիսպք առ հասարակ դողացեալ կոր-
9 ծանեցան ։ Կործանեցին յերկիր զդրունս
նորա, եւ խորտակեցին զնիգս նորա .
Թագաւորք նոցա եւ իշխանք նոցա ի
մէջ հեթանոսաց . ոչ գոյին օրէնք եւ
մարգարէք, եւ ոչ էին այնք որ տեսա-
10 նէին" տեսիլս ի Տեառնէ ։ Նստին, հարթ
եղեն գետնոյ, կարկեցան ծերք դստեր
Սիօնի, հող արկին զգլխով իւրեանց,
քրձազգածք եղեն, [3]յերկիր կործանե-
ցին զիշխանս կուսանացն" Երուսաղե-
11 մի ։ Պակասեցին աչք իմ յարտասուաց,
խռովեցաւ որովայն իմ . յերկիր [4]լուծան
փառք" իմ ի վերայ բեկման դստեր ժո-
ղովրդեան իմոյ . ի սատակել տղայոց
[5]ստնդիեաց ընդ ամենայն փողոցս քա-
12 ղաքին ։ Ի մարց իւրեանց պահանջէին
հաց եւ գինի . ի պակասել Թափել հա-
նել զոգիս իւրեանց՝ ընկեցեալ ցրու-
13 եալ կային ի մէջ քաղաքին" Զի՞նչ վկա-
յութիւն վկայեցից քեզ, կամ զի՞նչ նմա-
նութիւն նմանեցուցից քեզ, դուստր
Երուսաղեմի . [6]ո՞վ մխիթարեսցէ" զքեզ,
օրիորդ դուստր Սիօնի . զի [7]ծանրացաւ
բաժակ բեկման" քո, եւ ո՞վ իցէ որ
14 բժշկեսցէ զքեզ ։ Մարգարէքն տեսին
քեզ տեսիլս զուր տարապարտուց եւ
անօգուտ . եւ ոչ յայտնեցին քեզ զա-
նիրաւութիւնս քո, զի դարձ լիցի քեզ
ի գերութենէ քումմէ . այլ [8]պատմեցին
քեզ առասպելս սնոտիս, եւ մերժումն
15 ի տեղւոջէ իւրմէ ։ Ծափ զծափս հա-
րին" ամենայն անցաւորք ճանապարհի,
շչէին, շարժէին զգլուխս իւրեանց ի վե-
րայ դստեր [9]Սիօնի . Այս ա՞յն քաղաք է,
ասէին, պսակ փառաց ուրախութեան
16 ամենայն երկրի ։ Բացին զբերանս իւ-
րեանց ի վերայ քո ամենայն թշնամիք
քո, շչէին եւ կրճտէին զատամունս իւ-
րեանց, եւ ասէին, Եկայք կլցուք զդա,
զի այս՝ այն օր է որում ակն ունէաք .
[10]ահաւասիկ տեսաք եւ գտաք եւ հասաք
17 մեք նմա" ։ Արար Տէր զոր խօսեցաւ,
կատարեաց զբանս իւր զոր պատուի-
րեաց յաւուրցն առաջնոց . քակեաց եւ
ոչ խնայեաց . ուրախ արար ի վերայ
քո զթշնամիս քո, եւ բարձր արար զեղ-
18 ջեւր նեղչաց քոց ։ [11]Գոչեցեն սիրտք
նոցա առ պարիսպս դստեր Սիօնի, եւ
հոսեցեն" իբրեւ զհեղեղ զարտասուս
ի տուէ եւ ի գիշերի . [12]մի՛ լռեր եւ մի՛
դադարեր եւ մի՛ տար դուլ ական քում
19 յարտասուաց ։ Արի ի խոստովանութիւն
ի գիշերի, ի սկիզբն ի գլուխ պահուց
քոց" . հեղ իբրեւ զջուր զսիրտ քո ա-
ռաջի Տեառն . [13]համբարձ զձեռն քո վասն
անձանց [14]տղայոց՝ որ լուծանէին ի սո-
վոյ ի գլուխ ճանապարհաց ելից եւ մտից
20 քոց ։ Տես, Տէր, եւ հայեաց . ո՞ւմ ա-
րարեր այսպէս ճռաքաղ . եթէ կերիցե՞ն
կանայք զպտուղ որովայնի իւրեանց,
[15]արարեր ճռաքաղ . արկեր ի նեղքս
զխոհակերս, զենուլ ի նեղքս ի սրբու-
թեան Տեառն զդղայս ստնդիայս," զքա-
21 հանայն եւ զմարգարէն ։ Ննջեցին ի վե-
րայ ելիցն ճանապարհաց առ հասարակ

---

կանեաց զժողովեալս նորա . մոռացոյց Տէր ի Սիոն զտօնս տարեկանաց, եւ զշաբաթս . ի մանչել բարկութեան իւրոյ արհամարհեաց զթագաւոր եւ զքահանայ ։ [1]Եբր. փակեաց ի ձեռս թշնամւոյն [2]Եբր. տարեկանաց ։ (8) Խորհեցաւ Տէր կործանել զպարիսպս դստեր Սիոնի . արկ չափ և ոչ անդրէն դարձոյց զձեռն իւր յաւերելոյ . եւ սուգ առնուլ պատնիշին եւ պարսպի, ի միասին նուաղեցան ։ (9) Մտին ընդ գետին դրունք նորա, կորոյս եւ խորտակեաց զնիգս նորա . Թագաւոր նորա եւ իշխանք նորա ի մէջ հեթանոսաց . չիք օրէնք, մարգարէք նորա եւս ոչ գտին [3]Եբր. խոնարհեցուցին յերկիր զգլուխս իւրեանց կուսանք [4]Եբր. լուծաւ լեարդ [5]Եբր. եւ ստնդիեաց ընդ փողոցս քաղաքին ։ (12) Ցմարս իւրեանց ասեն, Ո՞ւր է հաց եւ գինի . ի նուաղել անձանց նոցա իբրեւ վիրաւորաց ի հրապարակս քաղաքին, ի թափել զոգիս իւրեանց ի գիրկս մարց իւրեանց ։ [6]Եբր. ո՞ւմ հաւասարեցից զքեզ . եւ զի՞նչ մխիթարեցից

[7]Եբր. մեծ է իբրեւ զծով բեկումն [8]Եբր. տեսին վասն քո տեսիլս սնոտի և պատրանս ։ (15) Ծափ զծափս հարին զքեն [9]Եբր. Երուսաղեմի [10]Եբր. գտաք եւ տեսաք զնա [11]Եբր. Գոչեաց սիրտ նոցա առ Տէր . պարիսպ դստեր Սիոնի, իջո [12]Եբր. մի՛ տար քեզ դուլ . մի՛ լռեսցէ բիբ աչաց քոց ։ (19) Արի, կարդա ի գիշերի ի սկզբան պահապանաց [13]Եբր. համբարձ առ նա [14]Եբր. տղայոց քոց [15]Եբր. զտղայս ստնդեայս . եթէ սպանանիցե՞ն ի սրբութեան Տեառն

ծերն եւ տղայն, [1]կուսանն եւ երիտա-
սարդն փողոցաց ի գերութիւն. ի սուր
արկեր՝ կոտորեցեր յաւուր բարկութեան
քո, զեներ, [2]խորտակեցեր, եւ ոչ ան-
22 խնայեցեր։ Կոչեցեր իբրեւ զօր տարե-
կանաց [3]պանդխտութեան իմոյ՝ շուրջ
զինեւ. եւ ոչ ոք էր որ զատանէր յաւուր
սրտմտութեան բարկութեան [4]Տեառն,
ապրեալք եւ մնացեալք ի սպանել ի բազ-
մանալ թշնամեաց իմոց ամենեցուն՝։

ԳԼ. Գ

1 [5]Աստուած հզօր, հայեաց յաղքատու-
թիւն իմ. ի ձեռն գաւազանի սրտմտու-
2 թեան իւրոյ ընկալաւ զիս. Եւ ած ի
3 վերայ իմ խաւար եւ ոչ լոյս. Բայց
սակայն՝ դարձոյց ի վերայ իմ զձեռն
իւր հանապազ։

4 Մաշեաց զմորթ եւ զմարմին իմ, զոս-
5 կերս իմ փշրեաց [2]առ հասարակ՝։ Շի-
նեաց ի վերայ իմ եւ պատեաց [6]զգլխով
6 իմով. Եւ ջանացաւ՝ նստոյց զիս ի խա-
ւարի իբրեւ զմեռեալ յաւիտենից։

7 [7]Կանխեաց ի վերայ իմ՝, եւ ոչ եւս կա-
րեմ ելանել. ծանրացոյց [8]ի վերայ իմ
8 քան զպղինձ։ Զի թէպէտ եւ ասացի՝
թէ Կարդացից եւ աղաղակեցից, փա-
կեալ եւ արգելեալ է առաջի իւր զա-
9 ղօթս իմ։ Արկ արգել ճանապարհաց ի-
մոց, եւ խից ի խրատուել՝ զշաւիղս իմ։

10 Եղեւ ինձ իբրեւ արջ դարանակալ եւ
11 իբրեւ առիւծ թաքուցեալ։ [9]Եմուտ զհետ
իմ, հալածեաց եւ եհար, եւ լքոյց զիս
12 եւ արար զիս յապականութիւն՝ Մուտ
ընդ զիրկս իւր, եւ եդից զիս նշանակ
իբրեւ զնպատակ։

13 [10]Կարեաց ընդ մէջ զերիկամունս իմ, ա-
14 րար զիս նետալից, Եւ ծաղր՝ ժողովր-
դեան իմոյ, եւ երգ նոցա զօրհանապազ։
15 Ջամբեաց ինձ լեղի, եւ արբոյց զիս
դառնութեամբ։

16 Քարալից արար զատամունս իմ. [11]եւ
17 ջամբեաց ինձ մոխիր։ Մերժեաց՝ ի
խաղաղութենէ զանձն իմ, մոռացայ
18 զբարիս։ [12]Կորեաւ յաղթութիւն՝ իմ եւ
յոյս իմ ի Տեառնէ։

19 [13]Յիշեցի յաղքատութենէ իմմէ եւ ի հա-
20 լածանաց իմոց. Դառնութիւն եւ բար-
կութիւն յուշ եղեն ինձ միանգամայն՝։
21 Ձանձրացաւ յիս անձն իմ։ Զայս ինչ
կարգեցի ի սրտի իմում, վասն այսորիկ
համբերից։

22 [14]Ողորմութիւնք Տեառն անսպառ են,
23 եւ՝ ոչ նուազեն գթութիւնք նորա։ Ի
նորոգումն առաւօտու բազմանայ ճշմար-
24 տութիւն քո։ Ասաց անձն իմ, Բայ, բա-
ժին իմ է Տէր, վասն այնորիկ ակն կա-
լայց նմա։

25 Բարերար է [15]Աստուած ի վերայ համբե-
րողաց [16]իւրոց, զի անձն՝ որ խնդրէ
26 զնա, Բարի է որ համբերէ [17]նմա ճշմար-
տութեամբ, եւ հանգչի նա՝ ի փրկու-
27 թեան Տեառն։ Բարի է մարդոյ առնուլ
զլուծ [2]խոնարհութեան ի մանկութենէ
իւրմէ։

28 Նստցի միայն [18]լռիկ ի տան իւրում՝, զի
անձամբ իւրով առ յանձն զլուծ քո։
29 Տացէ հողոյ զբերան իւր, [19]վասն զի՝ կայ
30 յոյս։ Մատուսցէ հարկանելեաց զծնօտս
իւր, լցցի նախատանօք։

31 Այլ ոչ թէ յաւիտեան մերժեսցէ Տէր։
32 Որ տառապեցոյց, նոյն ողորմեսցի ըստ

---

[1]Եբր. կուսանք իմ եւ երիտասարդք իմ անկան ի սուր. [2]Յեբր. [illegible] [3]Եբր. զարհաւիրս իմ [4]Եբր. Տեառն ապրեալ եւ մնացեալ. զորս սնուցեալ էր իմ և աճեցուցեալ՝ թշնամին իմ սպառեաց զնոսա [5]Եբր. Ես եմ այրն որ ետես տառապանս ի գաւազանի բարկութեան նորա. (2) Ած զիս եւ եդ գնալ ի խաւարի եւ ոչ ի լոյս։ (3) Արդարեւ դարձաւ յիս. [6]Եբր. լեղեաւ եւ տառապանօք. (6) Եւ [7]Եբր. Ած զինեւ ցանկ [8]Եբր. զշղթայս իմ։ (8) Նաեւ յորժամ աղաղակէի եւ գոչէի, փակեաց զաղօթս իմ։ (9) Շուրջ պատեաց զճանապարհս իմ վիմօք կոփելովք, խոտորեցոյց [9]Եբր. Դարձոյց զճանապարհս իմ, եւ յօշեաց զիս, եդ զիս յամայութիւն։

[10]Եբր. Եմոյծ յերիկամունս իմ զնետս (զորդիս) կապարճից իւրոց։ (14) Եղէ ծաղր ամենայն [11]Եբր. ընկղմեաց զիս ի մոխիր։ (17) Եւ հեռացուցեր [12]Եբր. Եւ ասացի, Կորեաւ զօրութիւն [13]Եբր. Յիշեա զտառապանս իմ և զթշուառութիւն իմ. զդառնութիւն եւ զլեղի։ (20) Յիշելով յիշեաց, և [14]Եբր. Ողորմութեան Տեառն է զի ոչ սպառեցաք, զի [15]Եբր. Տէր [16]Եբր. իւրոց, անձին [17]Եբր. եւ լռէ [18]Եբր. եւ լռեսցէ [19]Եբր. թերեւս

33 բազում ողորմութեանն իւրում․ [1]Ոչ եթէ
պատասխանի ի սրտէ իւրմէ, եւ խո-
նարհեցոյց" զորդիս մարդկան․

34 [2]Խոնարհեցուցանել ի ներքոյ ոտից նորա
զամենայն կապեալս երկրի, մասնել
35 զմարդ ի դատաստանի Տեառն, Խոտել
զիրաւունս առն առաջի երեսաց Բարձ-
36 րելոյն, Պատժել" զմարդ ի դատաստա-
նի Տէր ոչ ասաց․

37 [3]Ոչ ասաց՝ թէ Այսպէս տաց Տէր, եւ
38 եղեւ․" ոչ պատուիրեաց․ Ի բերանոյ Բարձ-
րելոյն [4]ոչ ելցեն սաստ չարիք եւ ոչ
39 բարիք․" Զի՞նչ տրտնջեսցէ մարդ կեն-
դանի, [5]կամ, այր ի վերայ մեղաց իւրոց․

40 [6]Քննեցան ճանապարհք մեր, եւ կշտամ-
41 բեցան․" դարձցուք մեք ի Տէր․ Համ-
բարձցուք զսիրտս մեր ձեռօք հան-
42 դերձ [7]ի բարձունս երկնից"․ Մեղաք մեք,
ամպարշտեցաք, եւ ոչ հաճեցար ընդ մեզ․

43 [8]Ցայց եղեր սրտմտութեամբ" բարկու-
թեամբ, եւ հալածեցեր զմեզ․ կոտո-
44 րեցեր եւ ոչ անխայեցեր․ Փակեցեր
ամպօք [9]զերկինս, զի մի՛ հասցեն աղօթք
45 [10]մեր առ քեզ․ Ընկեցեր մերժեցեր զմեզ,
արհամարհեալս եւ անարգեալ արարեր
զմեզ ի մէջ զօրաց հեթանոսաց․

46 Բացեր ի մեզ զամենայն բերանս թշնա-
47 մեաց մերոց"․ Ահ եւ երկեւղ եկն ի վե-
48 րայ մեր, բեկումն եւ սատակումն․ Եւ
հոսանս ջուրց իջուցին աչք իմ ի վե-
րայ բեկման դստեր ժողովրդեան իմոյ․

49 Աչք իմ [11]ընկլեան, եւ ոչ լռեցից եւ ոչ
50 լուայց, Մինչեւ երեւեսցի" եւ տեսցէ

51 Տէր յերկնից․ Ակն իմ [12]կաթեսցէ ի վե-
րայ անձին իմոյ, քան զամենայն դստերս
քաղաքաց իմոց"․

52 Որսալով որսացան զիս իբրեւ [13]հաւորսք
թշնամիք իմ, որսացան զիս" տարա-
53 պարտուց․ Հեղձուցին ի գբի զկեանս
54 իմ, եդին վէմ ի վերայ իմ․ Եւ զեղան
ջուրք զգլխով իմով, եւ ասացի՝ թամ, Ա-
հա [14]մերժեցայ․

55 Կարդացի զանուն քո, Տէր, ի գբոյ [15]տա-
56 ռապանաց․ Եւ դու լուար ձայնի իմում․
մի՛ թաքուցաներ զունկն քո ի խնդրուա-
ծոց իմոց, [16]այլ ընդարձակեա ինձ եւ
57 փրկեա զիս․ Դու յօգնել ինձ մերձե-
ցար, եւ ասացեր՝ թամ Ցորում աւուր
կարդացեր առ իս", մի՛ երկիցես․

58 Դատեցեր, Տէր, զդատաստան անձին ի-
59 մոյ․ փրկեցեր զկեանս իմ․ Տեսեր, Տէր,
զխռովութիւն իմ․ դատեցար զդատաս-
60 տանս իմ․ Տեսեր զամենայն [17]իրաւունս
իմ, հայեցար յամենայն խորհուրդս իմ"․

61 Լուար, Տէր, զնախատինս եւ զամե-
62 նայն խորհուրդս նոցա որ զինէն, [18]ի
շրթունս յարուցեալս" ի վերայ իմ զօր-
63 հանապազ․ Զնստելն նոցա եւ զյառնել
նոցա ի միտ [19]առի ես ի խորհրդոց ան-
տի" նոցա․

64 [20]Հայեաց ի հպարտութիւն աչաց նոցա,
եւ հատուսցես նոցա, Տէր, զհատու-
65 ցումն նոցա ի գլուխս նոցա․ Հատուս-
ցես նոցա ըստ պնդութեան սրտից նո-
66 ցա"․ Հալածեսցես զնոսա սրտմտու-
թեամբ քով, եւ մաշեսցես զնոսա [21]բար-
կութեամբ քո ի ներքոյ երեսաց երկ-
նից"․

---

[1]Եբր․ Զի ոչ տառապեցուցանէ ի սրտէ իւրմէ, եւ ոչ տխրեցուցանէ [2]Եբր․ Առնել կոխան ընդ ոտիւք իւրովք զամենայն կապեալս երկրի, (35) Թիւրել զիրաւունս մարդոյ առաջի երեսաց Բարձրելոյն, (36) Զրկել [3]Եբր․ Ո՞վ է որ ասաց եւ եղեւ, զոր Տէր [4]Եբր․ ո՞չ ելցեն բարիք եւ չարիք․ [5]Եբր․ պոխան [6]Եբր․ Քննեսցուք զճանապարհս մեր եւ փորձեսցուք, եւ [7]Եբր․ առ Աստուած որ յերկինս [8]Եբր․ Ծածկեցար [9]Եբր․ զքեզ [10]Եբր․ մեր․ (45) Ի գարշանս եւ յանարգանս եդիր զմեզ ի մէջ ազգաց․ (46) Բացին ի վերայ մեր զբերանս իւրեանց ամենայն թշնամիք մեր [11]Եբր․ հոսեցին եւ ոչ լռեցին առանց դադարելոյ․ (50) Մինչեւ հայեսցի

[12]Եբր․ տայ վիշտս անձին իմում վասն ամենայն դստերաց քաղաքի իմոյ [13]Եբր․ հաւ թշնամիք իմ [14]Եբր․ հատայ [15]Եբր․ խորոյ [16]Եբր․ յաղաղակէ իմմէ․ (57) Մերձեցար յաւուր կարդալոյ իմոյ առ քեզ, ասացեր [17]Եբր․ վրէժխնդրութիւն նոցա, զամենայն խորհուրդս նոցա զինէն [18]Եբր․ Զշրթունս յարուցեալս յիս եւ զխորհուրդս նոցա [19]Եբր․ առ․ ես երգ եմ [20]Եբր․ Հատո նոցա զհատուցումն, Տէր, ըստ գործոց ձեռաց նոցա․ (65) Տացես նոցա խստութիւն սրտի, զանէծս քո նոցա [21]Եբր․ ի ներքոյ երկնից Տեառն

## ԳԼ. Դ

1 Զիա՞րդ չլացաւ ոսկին, այլագունեաց
[1]արծաթն ազնուակ. հոսեցան՝՝ սփռեցան
ականք [2]նոցա ի գլուխ անցից ճանա-
2 պարհաց [3]նոցա։ Որդիք Սիոնի պատուա-
կանք, [4]որ առաւել քան զոսկանս պա-
տուականս՝՝, զիա՞րդ համարեցան իբրեւ
ամանք խեցեղէնք ձեռագործք [3]որդւոց
3 բրուտի։ Մերկացուցին [5]իբրեւ վիշապք՝՝
զստինս իւրեանց, եւ դիեցուցին զկո-
րիւնս իւրեանց. եղեն դստերք ժողո-
վրդեան իմոյ [6]ի տանջանս հարուածոց,
զի չիք նոցա բժշկութիւն. եւ տառա-
պեցան՝՝ իբրեւ ջայլամունք յանապատի։
4 Կցեցաւ լեզու դիեցկի մանկանց ի քիմս
իւրեանց ի ծարաւու իւրեանց. տղայք
հաց խնդրեցին, եւ ոչ ոք էր որ բրդէր
5 նոցա։ Որ ուտէին [7]զկերակուր՝ եղծան
ի վերայ անցից ճանապարհաց. [8]որ ի
գիրկս դրդեալք եւ գգուեալք էին, գիրկս
արկեալ աղբեաց թաթաւեալ թաւա-
6 լէին՝՝։ Բազմացաւ անօրէնութիւն դստեր
ժողովրդեան իմոյ քան զանօրէնութիւնս
Սոդոմայ [9]կործանելոյ. ի ճեպս ի փայլծ
յառնէին, եւ ոչ ուրեք էր վաստակ ձե-
7 ռաց իւրեանց։ Սրբեցան ուխտաւորք
նոցա, իբրեւ զձիւն սպիտակացան, իբ-
րեւ զկաթն զտեցան, իբրեւ զականս
8 շափիւղայ ի հատուցման իւրեանց՝՝։ Թխա-
ցան քան զածուխ տեսիլք իւրեանց, եւ
ոչ ոք ճանաչէր զնոսա [3]զի գնէին՝՝ յանցս
ճանապարհաց. մածեալ էր մորթ նոցա
յոսկերս նոցա. ցամաքեցան նոքա, եւ ե-
9 ղեն իբրեւ [10]զփայտ չորացեալ։ Գեղե-
ցիկ՝՝ էին վիրաւորքն զինականց անկե-
լոց ի սրոյ՝ քան զանկեալսն ի սովոյ.
[11]երթային վիրաւորք ազգք ազգք յա-
10 րանց՝՝։ Ձեռք կանանց ողորմածաց ե-
փեցին զմանկունս իւրեանց, եւ եղեն
նոցա ի կերակուր՝ առ ի բեկումն դստեր
11 ժողովրդեան իմոյ։ Ած եւ կատարեաց
Տէր զսրտմտութիւն բարկութեան իւ-
րոյ, եհեղ զսրտմտութիւն բարկութեան
իւրոյ, եւ բորբոքեցոյց հուր ի Սիոն եւ
12 եկեր զհիմունս նորա։ Ոչ հաւատային
թագաւորք [12]ամենայն երկրի՝՝ որ բնա-
կեալ էին ընդ տիեզերս, եթէ մտցէ
13 [13]թշնամի ընդ դրունս Երուսաղեմի։ Ի
մեղս մարգարէիցն [14]իւրեանց, եւ ի մեղս
քահանայիցն [14]իւրեանց, որ հեղուին զա-
14 րիւն արդարոցն ի միջի [15]իւրեանց, Շար-
ժեցան սասանեցան զօրութիւնք նոցա
յելս ճանապարհաց՝՝. պղծեցան թաթա-
ւեցան [16]յարեան մեռելոտւոց. զի ոչ կա-
րէին զհանդերձս նոցա անարատ հանել
15 ի նոցանէ։ Ի բաց կացէք, պիղծս կար-
դացէք զնոսա՝՝. ի բաց կացէք, ի բաց
կացէք, մի՛ մերձենայք, զի [17]չարժեցան
բորբոքեցան. ասացէք ի հեթանոսս՝ զի
16 Մի՛ եւս յաւելցին բնակել ի նոսա։ Կեն-
դանութեամբ միում նուաղեցին աչք
մեր յօգնականութենէ մերմէ, զի տա-
րապարտուց կացուցեալ էր մեր զնոսա
17 դէտս ի մտախս։ Երեսք Տեառն բաժա-
նեալ են ի նոցանէ, եւ ոչ եւս յաւելցի
հայել ի նոսա. երեսք քահանայից ակն
ոչ առին ծերոց, ոչ ողորմեցան ի վերայ
տղայոց նոցա՝՝. դէտ ակն կալեալ հա-
18 յէաք [18]յազգս որ ոչ փրկէին զմեզ։ Որ-
սացան զմեզ, փոքր մեւս եւս տատա-
կեալ ջնջեալ էր զմեզ ի քաղաքաց մե-
րոց։ Հաս ժամ, հասեալ է ժամանակ,
կատարեցան աւուրք մեր, լցան ժա-
19 մանակք։ Թեթեւացան հալածիչք մեր
ի վերայ լերանց, իբրեւ զարծուիս երկ-
նից. ի վերայ լերանց բարձանց ճախ-
րեցին, եւ՝՝ յանապատի ի դարան մտեալ

---

[1]Եբր. ոսկին սուրբ. [2]Եբր. սրբութեան [3]Յ Եբր. գործոյ [4]Եբր. հաւասարք ոսկւոյ սրբոյ [5]Եբր. վիշապք անգամ [6]Եբր. անագորոյն [7]Եբր. համադամս [8]Եբր. սնեալքն ի վերայ ծիրանեաց՝ գիրկս արկին աղբեաց [9]Եբր. որ կործանեցաւ յանկարծ, եւ ոչ մերձեցաւ ի նա ձեռն։ (7) Սուրբ էին ուխտաւորք (կամ, ազնուականք) նորա քան զձիւն, սպիտակ էին քան զկաթն, կարմիր էին մարմինք քան զյակինթ, շափիղա՝ կերպարանք նոցա։ [10]Կամ, զփայտ (9) Երանելի [11]Եբր. զի նոքա հաշեցան մաշեցան առ ի չգոյէ արդեանց ագարակի

[12]Եբր. երկրի, եւ ամենեքին [13]Եբր. հակառակորդն եւ թշնամին [14]Եբր. նորա [15]Եբր. նորա։ (14) Թափառեցան իբրեւ զկոյրս ի հրապարակս [16]Եբր. յարեան, մինչեւ չկարել ումեք մերձենալ ի հանդերձս նոցա։ (15) Ի բաց կացէք, պիղծք, գոչէին առ նոսա [17]Եբր. խոյս ետուն, թափառեցան. ասացաւ ի հեթանոսս, Նոքա մի՛ եւս բնակեսցեն աստ։ (16) Բարկութիւն Տեառն ցրուեաց զնոսա, ոչ եւս հայի ի նոսա. ոչ առին ակն երեսաց քահանայից, ոչ ողորմեցան ծերոց։ (17) Յարդ նուաղեցան աչք մեր ի հայելոյ յօգնականութիւն տարապարտուց [18]Եբր. յազգ որ ոչ փրկէր զմեզ։ (18) Որսան զգնացս մեր յերթալոյ ի հրապարակս մեր. մերձեցաւ վախճան մեր, լցան աւուրք մեր. արդարեւ եկն վախճան մեր։ (19) Եղեն թեթեւ հալածիչք մեր քան զարծուիս երկնից. ի վերայ լերանց հետամուտ եղեն մեզ։

20 պաշարեցին զմեզ ։ [1]Հոգի երեսաց մե-
րոց Տէր Քրիստոս, պատեցան զնովաւ
յապականութեան իւրեանց, մինչդեռ
մեք խորհէաք թէ ընդ հովանեաւ նո-
րա նստցուք եւ կեցցուք՝ ի մէջ հեթա-
21 նոսաց ։ Ցնծա դու եւ ուրախ լեր, դուստր
Եդովմայեցւոց, որ բնակեալդ ես յերկ-
րիդ [2]Աւսիտացւոց . եկեսցէ բաժակս այս
ի վերայ [3]քո . յարբցիս եւ արբցես, որ-
22 բեսցիս եւ անզգէն դարձուցես ։ Պա-
կասեցին անօրէնութիւնք քո, Սիոն,
եւ ոչ եւս յաւելցէ խրատել զքեզ . այց
արար անօրէնութեանդ քո, դուստր
Եդովմայ, յայտնեաց զամենայն ամպա-
րշտութիւնս քո ։

## Գլ. Ե

ʻԱղօթք Երեմիայ մարգարէի ։

1 Յիշեա, Տէր, որ ինչ անցք անցին ընդ
մեզ, նայեաց եւ տես զնախատինս մեր ։
2 Ժառանգութիւն մեր դարձաւ [5]յօտա-
րութիւն, եւ բնակութիւն մեր [6]ի նժդե-
3 հութիւն ։ Որբ մնացաք մեք, եւ ոչ գոյ մեր
հայր . մարք մեր իբրեւ այրիք [4]ի ժա-
4 մանակաց մերոց ։ Զջուր մեր գնոց ար-
բաք, եւ փայտն մեր [7]առանց փոխա-
5 նակի ։ Եկն ի վերայ պարանոցի մերոյ,
հալածական եղեաք, եւ ոչ գտաք հան-
6 գիստ ։ Զձեռնամբարձ [8]եղեն Եգիպտացիքն
եւ Ասորեստանեայքն՝ յագեցուցանել
7 հացիւ ։ Հարքն մեր մեղան, եւ [9]չիք ու-
րեք՝ ի միջի . եւ մեղք հարցն ընդ մեզ
8 եղին ։ Ծառայք տիրեցին մեզ, եւ այն
որ փրկէրն զմեզ ի ձեռաց նոցա՝ չիք ի
9 միջի ։ [10]Ելայք համբարս ի ներքս ա-
ռատցուք՝ յերեսաց սրոյն անապատի ։
10 Մորթք մեր [11]կարկամեցան իբրեւ զթո-
նիր հնացեալ յերեսաց բարկութեան՝
11 սովոյն ։ Զկանայս խայտառակեցին ի
Սիոն եւ զկուսանս ի քաղաքս Յուդայ ։
12 [12]Զձերս կախեցին զբութաց, եւ ի պա-
13 տուունս ոչ խնայեցին ։ Ընտիր ընտիրքն
զձայն բարձեալ կականէին, եւ երիտա-
սարդքն զփայտի հարեալ տկարացան ։
14 Ծերք ի դրացն մեկնեցան, եւ ընտիրքն
15 յօրհնութեանցն լռեցին ։ Լքան յուրա-
խութենէ սիրտք մեր, եւ դարձան ի
16 սուգ օրհնութիւնք պարուց մերոց ։ Ան-
կաւ պսակն ի գլխոց մերոց . վա՜յ մեզ,
17 վա՜յ մեզ, զի մեղաք ։ Վասն այսորիկ
[13]տուաւ մեզ սիրտ ցաւագին՝, վասն այ-
18 սորիկ եւ խաւարեցան աչք մեր, ի վե-
րայ լերին Սիոնի, զի դարձաւ յապա-
կանութիւն, եւ աղուեսք մտեալ եւ ել
19 անէին [14]ի սրահս նորա՝ ։ Եւ դու, Տէր,
յաւիտեան կաս, եւ աթոռ քո ազգէ
20 մինչեւ յազգ ։ Ընդէ՞ր մինչեւ ի սպառ
մոռանաս զմեզ, ʻհարեր թողեր եւ՝
լքցե՞ս զմեզ մինչեւ յերկար ժամանակս ։
21 Դարձո զմեզ, Տէր, [15]եւ դարձցուք . նո-
րոգեա զմեզ, Տէր, իբրեւ զաւուրսն զա-
22 ռաջինս ։ Զի մերժելով մերժեցեր զմեզ,
[16]բարկացաւ սրտմտութիւն բարկութեան
քո՝ ի վերայ մեր մինչեւ ի սպառ ։

[1] Եբր. Շունչ ռնգաց մերոց, օծեալն Տեառն, ըմբռնեցաւ ի խորխորատս նոցա, ընդ որոյ հովանեաւ ասէաք կեալ [2] Եբր. Հուս [3] Եբր. յոյ եւս. արբեցցիս եւ մերկասցիս ։ (22) Կատարեցաւ պատուհաս քո, դուստր Սիոնի, ոչ եւս յաւելցէ խախտել զքեզ . այց արասցէ անօրէնութեան քում, դուստր Եդովմայ, յայտնեսցէ զամպարշտութիւնս քո [4] Եբր. գոլով [5] Եբր. յօտարս [6] Եբր. յօտարազգիս [7] Եբր. գայ գնով, (5) Լուծ ի պարանոցի մերում, հալածական եղեաք . վաստակեցաք [8] Եբր. եղեաք Եգիպտացւոցն եւ Ասորեստանեայց

[9] Եբր. չեն [10] Եբր. Վտանգաւ անձին մերոյ բերէաք զհաց մեր [11] Եբր. խանձեցան իբրեւ զթոնիր յերեսաց սաստկութեան [12] Եբր. Իշխանք կախեցան զձեռաց իւրեանց (կամ, ի ձեռն նոցա,) ոչ մեծարեցին զերեսս ծերոց ։ (13) Երիտասարդք բարձին երկանս, եւ մանկունք անկան ընդ փայտիւ ։ [13] Եբր. եղեւ նուաղեալ սիրտ մեր [14] Եբր. ի նմա [15] Եբր. առ քեզ, եւ [16] Եբր. բարկացար

# ԳԼՈՒԽՔ ԳՐՈՑ ԵԶԵԿԻԵԼԻ ՄԱՐԳԱՐԷԻ

Գլ. Հմր.

Տեսիլ գազանացն ըստ Նկարագրին ի վերայ բանաւորաց, գազանաց անասնոց եւ թռչնոց. եւ անիւքն ի վերայ ժամանակի՝ զտիրելն Աստուծոյ յայտնէ, եւ նովաւ զվերջին գալն Քաղդէացւոցն եւ զաւերն Երուսաղեմի: Իսկ ըստ մարգարէութեան՝ զմարդանալն Քրիստոսի, եւ զկատարածն ի խաչն, և զեկեղեցւոյ յայտնէ. իսկ ըստ բարոյից՝ զչորս առաքինութիւնսն յորս հանգչի Աստուած. եւս եւ վասն հանդերձելոյ գալստեանն Քրիստոսի Ամբաստանէ Աստուած զԻսրայելէ, եւ ջամբեալ զմատեանն՝ կարգէ զնա դէտ ի վերայ Իսրայելի: Ա. 1

Ի կշտամբանս անարժանիցն կապանօք եւ լռութեամբ ճգնի մարգարէն: Դրոշմէ աղիւսովն զկործանումն Երուսաղեմի, եւ ի կողմն ննջելովն՝ չափէ զժամանակն ի մարգարէութենէն իւրմէ մինչեւ յառաջին ամն Կիւրոսի՝ քառասուն ամ: Եւ յաւերածէ տաճարին մինչեւ ի կանգնումն պարսպացն Երուսաղեմի առ Նեեմիաւ՝ հարեւր եւ յիսուն ամ. եւ ճնշելով զինքն՝ զուշակէ զսով եւ զգերութիւն. որ եւ առ մեզ պաշտի դատաստանն՝ աստ եւ ի հանդերձեալն: Գ. 22

Սպառնալով լերանցն զանվրէպ սուրն նշանակէ, եւ զկործանումն բագնացն. եւ կրկնելովն զխախճանն եւ զծախումն նոցա՝ ի սրոյ և ի սովոյ, եւ զըմբռնելն Սեդեկեայ: Զ. 1

Համբարձեալ զմարգարէն ածէ յԵրուսաղէմ, եւ ցուցանէ նմա զկուռսն ի դրունս եւ յորմս տաճարին. և զի լային զԹամուզ, որ է Ադոնիսն յառասպելս. ընդ որոյ վեց տապարաւորս արձակէ ի կոտորել, իսկ ի դրոշմեալսն խորհրդով խաչին՝ խնայել, եւ ցանել հուր ի քաղաքին: Ը. 1

Հակառակ մարգարէանայ չարախրատիցն, որք ասէին թէ ոչ գերիմք, այլ աստ վախճանիմք իբրեւ ի կաթսայ. որոց սպառնայ ցրել, և յետ փոքր ինչ դարձեալ ժողովել: ԺԱ. 1

Գերւոյ զգեստիւն եւ զաղտ ելանելովն՝ զփախչելն Սեդեկեայ և զըմբռնելն, եւ զկուրութեամբ ածելն ի Բաբելոն նշանակէ: ԺԱ. 22

Դարձեալ խըռով կարօտութեամբն նշանակէ մարգարէն զլլկանս սովոյն ի պաշարմանն, եւ թէ փութով հասանեն նոցա չարիքն: ԺԲ. 17

Տարագրէ յԻսրայելէ զսուտ մարգարէսն, որք զխարխուլ ժողովուրդն իբրեւ զորմն ծեփէին՝ խաղաղութիւն բղձանալով. անիծանէ եւ քրմուհեացն ընդ սուտ տեսլեանցն. եւ զի պահպանակսն հմայս ի բազուկս եւ ի գլուխս նոցա կապէին, զորս ի միջոյ բառնալ սպառնայ: ԺԳ. 1

Ասէ եւ վասն խոտորելոցն ի կուռսն եւ ի մոգսն, թէ Ես Տէր թոյլ տաց սատցն ըստ ախորժելոյ նոցա տալ պատասխանի, որպէս Սեդեկեայն Աքաաբու, և կորուսից զխաբօղսն եւ զխաբեալսն ի զգուշութիւն այլոց: ԺԴ. 1

Զի ոչ շահօղացն ապաշխարութեամբ զփրկութիւն՝ ոչ կարեն օգնել արդարքն. եւ որ երբեմն զմի որ խնդրէ ի խրամ ցանգոյն՝ զի մի՛ գայցեն բարձցէ, այժմ զերիսն ասէ անկարս, զի մի՛ ծոյլս արասցէ: Պաշտի բանս եւ ի հանդերձեալն դատաստան: ԺԴ. 12

Փայտիւ որթոյն զհրկիզութիւն քաղաքին նշանակէ, որք ի հրոյ յԵգիպտոսէ ելին, եւ ի հուր Բաբելացւոցն մաշին վասն յանցման կապաշտութեանն: ԺԵ. 1

Ի դէմս մանկաբարձի եւ փեսայի դնէ զխնամս իւր առ Երուսաղէմ՝ յԵգիպտոսէ եւ յառաջ, որոյ զընդդէմն փոխարինեալ՝ քան զՇամրին եւ զՍոդոմ, որ է Ռուբէն եւ Գադ. ընդ որոյ կրել ասէ պատիժս առ ի քուէլ: Պաշտի այժմ եւ առ մեզ ամբաստանելս, եւ անդ սպառնալիքս: ԺԶ. 1

Արծուին մեծ Նաբուքոդոնոսոր, որ գերեաց զՅեքոնիա եւ կացոյց զՍեդեկիա. մայր Լիբանանու՝ թագաւորքն Երուսաղեմի. իսկ այլ արծուի՝ Փարաւոն, յոր ձեռս ետ Սեդեկիա եւ անց զերդմամբն, զոր եկեալ գերեաց Բաբելացին. խոստանայ եւ զդարձն, բայց ճշմարտութիւնն ի Քրիստոս հայի, որ կախեցաւ զխաչէն ի լեառն Գողգոթա: ԺԷ. 1

Ուղղէ զթեւր կարծիսն, զի ասէին թէ հարքն մեղան, եւ մեք գերիմք. եւ յայտնէ թէ յորում մասին վախճան կենաց հասանէ՝ այնր մասին լինիմք վիճակեալք: ԺԸ. 1

Ողբայ զՍեդեկիա եւ զեղբարս նորա, ամբաստանելով զվայրենի զնացս նոցա: ԺԹ. 1

Ամբաստանէ զանհնազանդութենէ նոցա յԵգիպտոսէ եւ յառաջ, եւ սպառնայ թէ հանից զձեզ յազգաց, յԵգիպտոսէ ուր ապաստանն եղեն. եւ ածից զձեզ յանապատ,

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ԵԶԵԿԻԵԼԻ

## ԳԼՈՒԽ Ա

[1]Տեսիլ Եզեկիելի մարգարէի՛՛

1 Եւ եղեւ յամին երեսներորդի, յամ-
սեանն չորրորդի, որ օր հինգ էր
ամսոյն, եւ էի ես ի մէջ գերութեանն
առ ափն Քոբար գետոյ, եւ բացան եր-
2 կինք, եւ տեսի *տեսիլ Աստուծոյ։ Որ
օր հինգ էր ամսոյն, այն ամ հինգերորդ
էր գերութեանն Յովաքիմայ արքայի,
3 Եւ եղեւ բան Տեառն առ Եզեկիէլ քա-
հանայ՝ որդի Բուզեայ, յերկրին Քաղ-
դէացւոց ի վերայ Քոբար գետոյ. եւ
անդ եղեւ ի վերայ [2]իմ ձեռն Տեառն։
4 Եւ տեսի եւ ահա [3]հողմ վերացեալ՛՛
գայր ի հիւսիսոյ, ամպ մեծ [1]ի կողմանէ
նորա՛՛, եւ հուր փայլատակէր ի նմանէ.
եւ լոյս շուրջ զնովաւ, եւ ի մէջ նորա իբրեւ
զտեսիլ բազմագունի ականց՝ [4]եւ ճառա-
5 գայթք ի նմա՛՛։ Եւ ի մէջ նորա կերպարանք
չորից կենդանեաց, եւ այս տեսիլ նոցա.
6 կերպարանք մարդոյ ի վերայ նոցա։ Եւ
չորք դէմք միոյ, եւ չորք թեւք միոյ
7 միոյ ի նոցանէ։ Եւ բարձք նոցա բարձք
ուղղորդք, [1]եւ ոտք նոցա թեւաւորք
էին,՛՛ եւ կճղակք նոցա իբրեւ զկճղակս
որթուց. եւ կայծակունք թօթափէին ի
նոցանէ իբրեւ ի փայլատակմանց պղնձոյ.
8 [1]եւ թեւք թեւոց նոցա թեթեւք էին՛՛ Եւ
ձեռն մարդոյ ի ներքոյ թեւոց նոցա ի
չորեսին կողմանս նոցա. եւ երեսք նո-
9 ցա եւ թեւք՝ չորեցունց։ Ընդ միմեանս
թեւակցէին խառնեալ. եւ զերեսս իւ-
րեանց ի գնալն յետս ընդդէմ ոչ դար-
ձուցանէին, իւրաքանչիւր հանդէպ ե-
10 րեսաց իւրեանց գնային։ Եւ կերպա-
րանք երեսաց նոցա՝ [5]կերպարանք մար-
դոյ եւ [6]կերպարանք առիւծու յաջմէ
չորեցունց, եւ [6]կերպարանք եզին եւ
կերպարանք արծուոյ ի ձախմէ՛՛ չորե-
11 ցունց։ Եւ այս [7]կերպարանք նոցա. եւ
թեւք նոցա տարածեալ ի վերուստ [1]չո-
րեցունց. իւրաքանչիւր երկու երկու
խառնեալ ընդ միմեանս, եւ երկու եր-
կու ծածկէին ի վերուստ զմարմինս իւ-
12 րեանց։ Եւ իւրաքանչիւր հանդէպ երե-
սաց իւրեանց գնային. յոր կողմն ոգի-
մէր հողմն՝ գնային, եւ յետս ընդդէմ
13 ոչ դառնային ի գնալս իւրեանց։ Եւ [7]ի
մէջ գազանացն՝ տեսիլ՛՛ իբրեւ զկայ-
ծականց հրոյ բորբոքելոյ, եւ իբրեւ
զտեսիլ ղամբարաց խառնելոց ի մէջ [8]գա-
զանացն, եւ լոյս հրոյ. եւ ի հրոյ անտի
14 փայլատակունք հատանէին։ Եւ [9]գա-
զանքն երագս ընթանային, եւ թեթեւս՛՛
դառնային ի նմանութիւն [10]արեգական։
15 Եւ տեսանէի[11] եւ ահաւասիկ անիւ
մի յերկրի [12]զհետ գազանացն չորե-
16 ցունց՛՛։ Եւ կերպարանք անուոցն եւ
արար նոցա՝ իբրեւ զտեսիլ ականց
Թարսիսի. եւ [13]կերպարանք չորեցունց՛՛
եւ տեսիլ նոցա եւ գործուած իւրեանց՝
որպէս թէ շրջիցի անիւ ի մէջ անուոյ։
17 Ի չորեսին կողմանս իւրեանց գնային,
եւ յետս ընդդէմ ոչ դառնային ի թի-
18 կունս իւրեանց. [14]Եւ բարձունք էին։
Հայէի ընդ նոսա եւ տեսանէի զի՛՛ լի
էին աչօք թիկունք նոցա շուրջ զչորե-
19 քումբք։ Եւ ի գնալ [8]գազանացն՝ գնա-
յին եւ անիւքն ընդ նոսա, եւ ի վերա-
նալ [8]գազանացն յերկրէ՝ վերանային եւ

---

[1] Յեբր. [illegible] [1]Եբր. տեսիլս [2]Եբր. Նորա [3]Եբր. մրրիկ հողմոյ [4]Եբր. ի միջոյ հրոյն [5]Եբր. երեսք

[6]Եբր. երեսք եզին ի ձախմէ չորեցունց, և երեսք արծուոյ [7]Եբր. կերպարանք կենդանեացն, տեսիլ նոցա [8]Եբր. կենդանեացն [9]Եբր. կենդանիքն ընթանային և [10]Եբր. փայլական [11]Եբր. այեցեալ կենդանիս, [12]Եբր. առ ընթեր կենդանեացն ըստ չորեցունց երեսաց նորա [13]Եբր. Նմանութիւն մի՝ չորեցունց նոցա, [14]Եբր. Եւ շրջանակ նոցա բարձր եւ ահաւոր, եւ

20 անիւքն ։ Ընդ որ կողմ դիմէր [1]ամպն
եւ հողմն՝ երթային գազանքն՝՝ եւ ա-
նիւքն ընդ նոսին վերանային. զի ոգի
21 [2]կենդանի գոյր յանիւսն ։ Ի գնալն նո-
ցա գնային, եւ ի կալն նոցա զտեղի
առնուին, եւ ի վերանալ նոցա յերկրէ՝
եւ անիւքն ընդ նոսին վերանային. զի
22 ոգի [2]կենդանի գոյր յանիւսն ։ Եւ նմա-
նութիւն [3]հաստատութեան ի վերայ գլխոյ
[2]գազանացն իբրեւ զտեսիլ ական [4]վա-
նի՝ տարածեալ ի վերայ [5]թեւոց նոցա
23 ի վերուստ ։ Եւ ի ներքոյ հաստատու-
թեանն թեւք իւրեանց տարածեալ սա-
ւառնէին ընդ միմեանս. [6]եւ իւրաքան-
չիւր երկու երկու ծածկէին զմարմինս
24 իւրեանց՝՝ ։ Եւ լսէի զձայն թեւոց նոցա
[7]ի սաւառնելն իբրեւ զձայն ջուրց բազ-
մաց, եւ իբրեւ զձայն [8]Աստուծոյ Սա-
դայի. եւ՝՝ ի գնալն իւրեանց՝ ձայն
պատգամաց իբրեւ զձայն բանակի. եւ
ի կալն իւրեանց՝ [9]հանգչէին թեւք՝՝ իւր-
25 եանց ։ Եւ ահա բարբառ ի վերուստ
քան զհաստատութիւնն որ էր ի վերայ
գլխոյ նոցա՝ ի կալն իւրեանց, [7]եւ յամ-
26 բառնալն՝՝ զթեւս իւրեանց ։ Եւ ի վերայ
քան զհաստատութիւնն որ ի վերայ
գլխոյ նոցա, իբրեւ զտեսիլ ական շա-
փիղայ, նմանութիւն աթոռոյ [10]ի վերայ
նորա, եւ ի վերայ աթոռոյն՝՝ նմանու-
27 թիւն կերպարանաց [11]մարդոյ ։ Եւ տե-
սանէի իբրեւ զտեսիլ ական բազմագու-
նի, իբրեւ զտեսիլ հրոյ ի ներքոյ քան
զնա շուրջանակի. միջովք չափ ի վեր՝
նմանութիւն արեգական, եւ միջովք
չափ ի խոնարհ՝ նմանութիւն հրոյ. եւ
լոյսն՝՝ որ շուրջ զնովաւ՝ բակ ունէր.
28 Իբրեւ տեսիլ աղեղանց որ ձգի յամպս
յաւուրս անձրեւաց, [12]եւ այսպէս ահա-
զին տեսիլ լուսոյ՝՝ շուրջ զնովաւ ։ Այս
տեսիլ՝ նմանութիւն փառացն Տեառն.
իբրեւ տեսի՝ անկայ ի վերայ երեսաց ի
մոյ, եւ լուայ բարբառ որ խօսէր ընդ իս ։

ԳԼ. Բ

1 Եւ ասէր, Որդի մարդոյ, կաց ի վե-
րայ ոտից քոց եւ խօսեցայց ընդ քեզ ։
2 Եւ եկն ի վերայ իմ Հոգի, [13]վերացոյց
զիս եւ կանգնեաց կացոյց՝՝ ի վերայ ո-
տից իմոց. եւ լսէի զի խօսէր նա ընդ
3 իս. Եւ ասէր, Որդի մարդոյ, ես ա-
ռաքեցից զքեզ առ [14]դառնացուցիչ տունդ
Իսրայէլի, որք դառնացուցին զիս՝՝ նո-
քեանք եւ հարք իւրեանց, անարգեցին
4 զիս մինչեւ ցայսօր ։ Որդիք եզջերիկք
եւ խստասիրտք են առ որս առաքեմն
զքեզ, եւ ասասցես ցնոսա, Այսպէս
5 ասէ Տէր Տէր. Եթէ իցէ լուիցեն [15]կամ
սարսեսցին՝՝, զի տուն դառնացողաց են.
եւ [7]կամ բնաւ՝՝ ծանիցեն թէ մարգարէ
ես դու ի մէջ նոցա ։
6 Եւ դու, որդի մարդոյ, մի երկնչի-
ցիս ի նոցանէ, եւ մի զանգիտիցես [16]յե-
րեսաց նոցա. զի զայրանալով զայրաս-
ցին եւ յարիցեն ի վերայ քո, զի՝՝ ի մէջ
կարճաց բնակեալ ես դու. մի երկնչի-
ցիս ի բանից նոցա եւ յերեսաց նոցա
մի զանգիտիցես, զի տուն դառնացո-
7 ղաց են ։ Եւ խօսեսցիս ընդ նոսա զբանս
զայսոսիկ. եթէ իցէ լուիցեն [15]կամ սար-
սեսցեն՝՝, զի տուն դառնացողաց են ։
8 Եւ դու, որդի մարդոյ, լուր բանից
զոր խօսիմ ընդ քեզ, մի լինիր դառնա-
ցող իբրեւ զտուն դառնացողաց. բաց
զբերան քո եւ կեր զոր ջամբեցից քեզ ։
9 Տեսի, եւ ահա ձեռն ձգեալ առ իս, եւ
ի նմա մատեան մի գրոյ. եւ պարզեաց
զնա առաջի իմ. եւ էր գրեալ ի նմա
ներքոյ եւ արտաքոյ՝ ողբս եւ ձայնս
եւ վայս ։

ԳԼ. Գ

1 Եւ ասէ ցիս, Որդի մարդոյ, զոր ինչ
գտանես ի դմա՝ կեր. կեր մանր զմա-
տեանդ զայդ, եւ գնա եւ խօսեաց ընդ
2 որդիսն Իսրայէլի ։ [17]Եբաց զբերան իմ,

---

[1]Եբր. ոգին, երթային եւ նոքա. անդր ուր դիմէր ոգին [2]Եբր. կենդանեացն [3]Եբր. տարածութեան երկնից, (Նոյնպէս է ստորեւ ։) [4]Եբր. վանի՝ ահեղ, [5]Եբր. գլխոց [6]Եբր. իւրաքանչիւրումն երկու՝ ի ծածկել ի միում կողմանէ, և իւրաքանչիւրումն երկու՝ ի ծածկել ի միում կողմանէ զմարմինս իւրեանց [7]Յեբր. պակասէ [8]Եբր. Ամենակալի [9]Եբր. հանգուցանէին զթեւս [10]Եբր. եւ ի վերայ նմանութեան աթոռոյն [11]Եբր. մարդոյ՝ ի վերայ նորա ի վերուստ ։ (27) Եւ տեսի իբրեւ զակն բազմագունի, իբրեւ զտեսիլ հրոյ ի ներքոյ շուրջանակի ի տեսլենէ միջոյ նորա եւ ի վեր. եւ ի տեսլենէ միջոյ նորա եւ ի խոնարհ՝ տեսի իբրեւ զտեսիլ հրոյ, եւ պայծառութիւն [12]Եբր. այսպէս տեսիլ պայծառութեանն

[13]Եբր. իբրեւ խօսէր ընդ իս. և կանգնեաց զիս [14]Եբր. որդիսն Իսրայելի, յազգ ապստամբ, որ ապստամբեցան յինէն [15]Եբր. եւ եթէ ի բաց կացցեն [16]Եբր. ի բանից նոցա, զի փուշք և տատասկք են ընդ քեզ, եւ [17]Եբր. Ես բացի

3 եւ ջամբեաց զմատեանն․ Եւ ասէ ցիս,
Որդի մարդոյ, [1]բերանք քո կերիցէ, եւ որո-
վայն քո լցցի ի մատենէ աստի որ տուաւ
քեզ։ Կերայ" զայն, եւ եղեւ ի բերանի
իմում իբրեւ զքաղցրութիւն մեղու։
4 Եւ ասէ ցիս, Որդի մարդոյ, գնա դու
եւ մուտ ի տունն Իսրայելի, եւ խօսես-
5 ցես առ նոսա զպատգամս իմ։ Զի ոչ
եթէ առ ժողովուրդ խորախօս ծանրա-
լեզու առաքեցից առ տունն Իսրա-
6 յելի․ Եւ ոչ առ ժողովուրդս բազումս
[2]այլազգիս կամ այլալեզուս, եւ ոչ առ"
թանձրալեզուս զորոց ոչ լսիցես զբանս
նոցա․ զի թէ առ այնպիսիսն առա-
քէի զքեզ, սակայն եւ նոքա լսէին քեզ։
7 Այլ տունն Իսրայելի ոչ հաւանեսցին լսել
քեզ, քանզի ոչ կամին լսել ինձ․ զի
ամենայն տունն Իսրայելի [3]հակառակօղք
8 եւ խստասիրտք են։ Եւ ահաւասիկ ա-
րարի զդէմս քո հաստատուն առաջի ե-
րեսաց նոցա․ եւ [4]զյաղթութիւն քո զօ-
րացուցից առաջի հակառակութեան նո-
9 ցա․ Եւ եղիցի յամենայն ժամ հաստա-
տուն իբրեւ զվէմ յաղթութիւն" քո.
մի՛ երկնչիր ի նոցանէ, եւ մի՛ զանգի-
տիցես յերեսաց նոցա․ զի տուն դառ-
նացողաց են։
10 Եւ ասէ ցիս Տէր, Որդի մարդոյ, զա-
մենայն զբանս զոր խօսեցայ ընդ քեզ,
լուր ականջօք քովք, եւ դիր ի սրտի
11 քում․ Եւ երթ մուտ ի մէջ գերութեանն,
առ որդիս ժողովրդեան քո, խօսեսցիս
ընդ նոսա եւ ասասցես, Այսպէս ասէ
Տէր Տէր․ եթէ լուիցեն եւ [5]ան-
սայցեն։
12 Եւ վերացոյց զիս Ոգի, եւ լուայ զկնի
իմ ձայն շարժման մեծի, [6]որ ասէին,"
Օրհնեալ են փառք Տեառն ի տեղւոջէ
13 իւրմէ․ Եւ [7]տեսի ձայն թեւոց զազա-
նացն" սաւառնելոց ընդ միմեանս եւ ձայն
անուացն զհետ նոցա, եւ ձայն [8]շարժ-
14 ման։ Եւ Հոգի Տեառն" վերացոյց զիս
եւ բարձրացոյց, եւ երթայի [9]համբար-
ձեալ ի գիմել հոգւոյն իմոյ", եւ ձեռն
Տեառն եղեւ ի վերայ իմ զօրութեամբ․
15 Եւ [10]մտի վերամբարձ ի մէջ գերութեանն,
եւ շրջեցայ առ բնակիչսն Քոբար գետոյ՝
որ էին անդ․ եւ նստայ անդ աւուրս
եւթն զարմացեալ" ի մէջ նոցա։
16 Եւ եղեւ յետ եւթն աւուրն, եղեւ բան
17 Տեառն առ իս, եւ ասէ, Որդի մարդոյ,
դէտ կացուցի զքեզ տանդ Իսրայելի․ եւ
լուիցես յինէն զպատգամս, եւ [11]սպառ-
18 նասցես նոցա իբրեւ" յինէն։ Յորժամ
ասիցեմ ցանօրէնն թէ Մահու մեռանի-
ցիս, եւ դու ոչ զգուշացուցանիցես նմա,
եւ ոչ խօսեսցիս զգուշանալ անօրինին
[6]եւ դառնալ" ի ճանապարհաց իւրոց չա-
րաց եւ կեալ, անօրէնն այն յանօրէ-
նութեան իւրում մեռցի, եւ զարիւն
19 նորա ի ձեռաց քոց խնդրեցից։ Իսկ ե-
թէ դու զգուշացուցանիցես անօրինին,
եւ նա ոչ դարձցի յանօրէնութենէ իւր-
մէ եւ ի ճանապարհէ իւրմէ[12], անօրէնն
այն յանօրէնութեան իւրում մեռցի,
20 եւ դու զանձն քո ապրեցուցես։ Եւ
յորժամ դարձցի արդարն յարդարու-
թենէն իւրմէ եւ արասցէ յանցանս, ար-
կից [13]տանջանս զգլխով" նորա, ինքն
մեռցի․ [14]քանզի ոչ եթէ" յիշեսցին ար-
դարութիւնք նորա զոր արար․ բայց
[6]քանզի դու ոչ զգուշացուցեր նմա,"
զարիւն նորա ի ձեռաց քոց խնդրեցից։
21 Արդ եթէ դու զգուշացուցանիցես զար-
դարն զի մի՛ մեղիցէ արդարն[15], կենօք
կեցցէ, զի դու զգուշացուցեր նմա․ եւ
դու զանձն քո ապրեցուցես։
22 Եւ եղեւ ի վերայ իմ անդ ձեռն Տեառն,
եւ ասէ ցիս, Արի եւ ել դու ի դաշտ անդր,
23 եւ անդ խօսեցայց ընդ քեզ։ Յարեայ
եւ ելի ի դաշտ անդր․ եւ ահա իջեալ
կային անդ փառքն Տեառն, իբրեւ [6]զտե-
սիլն եւ" զփառսն զոր տեսի առ ափն
Քոբար գետոյ․ եւ անկայ ի վերայ ե-
24 րեսաց իմոց։ Եւ եկն ի վերայ իմ Հոգի,
եւ կացոյց զիս ի վերայ ոտից իմոց․ եւ
խօսեցաւ ընդ իս եւ ասէ, Մուտ եւ
25 արգելիր ի մէջ տան քո։ Եւ դու, որդի

[1]Եբր․ ջամբեա որովայնի քում, եւ լից զաղիս քո մատենիւդ այդուիկ զոր տամ քեզ։ Եւ կերայ [2]Եբր․ խորախօս։ եւ [3]Եբր․ ժպիրհ երեսօք [4]Եբր․ զճակատ քո հաստատուն ընդդէմ ճակատուց նոցա․ (9) Իբրեւ զադամանդ հաստատուն քան զվէմ արարի զճակատ [5]Եբր․ եթէ ի բաց կասցեն [6]Յեբր․ պակասէ [7]Եբր․ ձայն թեւոց կենդանեացն [8]Եբր․ շարժման մեծի (14) Եւ Հոգին [9]Եբր․ դառնացեալ ի տապդ հոգւոյ իմոյ

[10]Եբր․ եկի առ գերութիւնն ի Թելաբիբ առ որս բնակէին առ Քոբար գետով, եւ նստայ առ որս նստէին անդ, եւ նստայ անդ աւուրս եւթն զարմացեալ [11]Եբր․ զգուշացուցես զնոսա [12]Եբր․ յետ այսր յաւելու, չարէ [13]Եբր․ գայթակղութիւն առաջի [14]Եբր․ զի ոչ զգուշացուցեր զնա, ի մեղս իւր մեռցի, եւ ոչ [15]Եբր․ յետ այսր յաւելու, եւ նա ոչ մեղիցէ

մարդոյ, ահաւասիկ տուեալ են ի վերայ
քո կապանք, եւ կապեսցեն զքեզ նո-
26 քօք. եւ ոչ ելցես [1]ի միջոյ նոցա։ Եւ
զլեզու քո կապեցից ի քիմս քո, եւ ե-
ղիջիր դու համր. եւ ոչ եղիցիս դու նո-
ցա իբրեւ զայր մի յանդիմանիչ, զի տուն
27 դառնացողաց են։ Եւ յորժամ խօսիցիմ
ընդ քեզ, բացից զբերան քո, եւ ասաս-
ցես ցնոսա, Այսպէս ասէ Ադոնայի Տէր
[2]Տէր. Որ լսելոցն իցէ՝ լուիցէ, եւ որ
արհամարհելոցն իցէ՝ արհամարհեսցէ.
քանզի տուն դառնացողաց են։

## ԳԼ. Դ

1 Եւ դու, որդի մարդոյ, առ դու քեզ
աղիւս մի, եւ դիցես զնա առաջի երե-
սաց քոց. եւ նկարեսցես ի նմա զքա-
2 ղաքն Երուսաղէմ։ Եւ տացես շուրջ
զնովաւ պաշարումն, եւ շինեսցես շուրջ
զնովաւ մարտկոցս, եւ պատեսցես շուրջ
զնովաւ պատնէշ, եւ տացես շուրջ զնո-
վաւ բանակս, եւ ածցես շուրջ զնովաւ
3 նետակալս։ Եւ առցես դու քեզ տապակ
երկաթի, եւ կանգնեսցես զնա իբրեւ
զպարիսպ երկաթի ընդ քեզ եւ ընդ քա-
ղաքն. եւ պատրաստեսցես զերեսս քո
ի վերայ նորա, եւ եղիցի ի պաշարումն,
եւ պաշարեսցես զնա. զի այն նշանակ
4 է [3]որդւոցն Իսրայելի։ Եւ դու ննջես-
ցես ի ձախակողմն քո, եւ դիցես զա-
նիրաւութիւնս տանն Իսրայելի ի վերայ
դորա. ըստ թուոյ աւուրց զոր ննջես-
ցես ի վերայ դորա [4]հարիւր եւ յիսուն
օր. եւ առցես" զանիրաւութիւնս նո-
5 ցա։ Եւ ես ետու քեզ [5]զերկուս անի-
րաւութիւնս նոցա ի թիւ աւուրց՝ հա-
րեւր" եւ յիսուն օր. եւ [4]առցես զա-
6 նիրաւութիւնս տանն Իսրայելի։ Եւ բո-
վանդակեսցես [6]ի միասին զամենայն",
եւ դարձեալ ննջեսցես յաջակողմն քո,
եւ [4]առցես զանիրաւութիւն տանն Յու-
դայ զքառասուն օր. զի օր ընդ տար-
7 ւոյ եդի քեզ։ Եւ ի պաշարումն Երու-
սաղէմի [7]պատրաստեսցես զերեսս քո,
եւ զօրացուսցես զբազուկս քո", եւ
8 մարգարէասցիս ի վերայ նորա։ Եւ ես
ահա ետու ի վերայ քո կապանս, եւ մի՛
փոխեսցես կողմն ի կողմանէ մինչեւ

[1] Եբր. ի մէջ [2] Յեբր. պակաս [3] Եբր. տանն
[4] Եբր. կրեսցես [5] Եբր. զամս անիրաւութեան
նոցա ի թիւ աւուրց՝ երեք հարեւր [6] Եբր.
զնոսա [7] Եբր. հաստատեսցես զերեսս քո, եւ
բազուկք քո մերկացեալք

կատարեսցին աւուրք արգելանին քո։
9 Եւ դու առ քեզ ցորեան եւ գարի, ոսպն
եւ ոլոռն եւ կորեակ եւ հաճար, եւ
արկցես [8]զայն յաման մի խեցեղէն. եւ
արասցես դու զայն" քեզ հաց. եւ ըստ
թուոյ աւուրցն զոր ննջեսցես դու ի
կողմն քո՝ [9]հարիւր եւ յիսուն օր կե-
10 րիցես զայն։ Եւ զկերակուրն քո կերի-
ցես կշռով, քսան սիկղ յաւուր, ժամէ
11 ի ժամ կերիջիր զնա. Եւ ջուր չափով
արբջիր, զվեցերորդ մասն դորակի միոյ՝
12 ժամէ ի ժամ արբջիր։ Եւ նկան գարե-
ղէն արկեալ կերիցես զնա. յաղբ մար-
դոյ եփեսջիր զայն առաջի երեսաց նո-
13 ցա։ Եւ [10]ասասցես, Այսպէս ասէ Տէր
Աստուած Իսրայելի". Այսպէս կերիցեն
որդիքն Իսրայելի զհաց իւրեանց պղծու-
թեամբ ի մէջ ազգաց ուր ցրուեցից զնո-
14 սա անդր։ Եւ ասեմ, Բաւ լիցի, Տէր
[11]Աստուած Իսրայելի, եթէ պղծեալ իցէ
երբեք անձն իմ ի պղծութիւնս", եւ մե-
ռելոտի եւ գազանաբեկ ոչ երբեք կե-
րայ ի ծննդենէ իմմէ մինչեւ ցայժմ, եւ
ոչ եմուտ ի բերան իմ ամենայն միս
15 պիղծ։ Եւ ասէ ցիս, Ահա ետու քեզ
քակոր արջառոյ փոխանակ աղբոյն մար-
դոյ, եւ նովաւ արասցես զհաց քո։
16 Եւ ասէ ցիս Տէր, Որդի մարդոյ, ա-
հաւանիկ ես բեկանեմ զհաստատութիւն
հացի յԵրուսաղէմ, եւ կերիցեն հաց
կշռով եւ կարօտանօք, եւ ջուր չա-
17 փով եւ կարօտութեամբ արբցեն։ Զի
եղիցին կարօտեալք ի հացէ եւ ի ջրոյ.
եւ [12]ապականեսցի մարդ եւ եղբայր իւր,
եւ հաշեսցին յանիրաւութիւնս իւրեանց։

## ԳԼ. Ե

1 Եւ դու, որդի մարդոյ, առ քեզ սու-
սեր յեսանաւոր, [13]սուր քան զսրիչ"
վարսավիրայից. ստանասցես զայն քեզ,
եւ ածիցես զայն զգլխով քով եւ զմօր-
ուօք. եւ առցես կշիռս եւ [14]կշռեսցես
2 զնոսա։ Զչորրորդ" մասնն հրով այրես-
ցես ի մէջ քաղաքին, ըստ լրութեան
աւուրցն արգելանին. եւ [15]զչորրորդ
մասնն կոտորեսցես սրով շուրջ զնովաւ.
եւ [16]զչորրորդ մասնն հոսեսցես հողմոյ,

[8] Եբր. զնոսա յաման մի, և արասցես դու զնոսա
[9] Եբր. երեք հարեւր [10] Եբր. ասէ Տէր [11] Եբր. Եհո-
վայ, ահա անձն իմ չէ պղծեալ [12] Եբր. ապ-
շեսցի [13] Եբր. սրբիչ [14] Եբր. բաժանեսցես
զնոսա։ (2) Զերրորդ [15] Եբր. առցես զերրորդ
[16] Եբր. զերրորդ

3 եւ սուր արձակեցից զկնի նոցա։ Եւ առցես
անտի սակաւ ինչ թուով, եւ ծրարեսցես
4 ի մեկնոցի քում։ Եւ պարձեալ առցես
անտի եւ ընկեսցես ի մէջ հրոյ, եւ այրեսցես
զնոսա ի հուր, եւ անտի ելցէ հուր
[1]եւ ասասցես" ամենայն տանն Իսրայելի։
5 Այսպէս ասէ Ադոնայի Տէր. Այս այն
Երուսաղէմ է զոր եդի ի մէջ հեթանո-
սաց զգա, եւ որ շուրջ զդովաւ գա-
6 ւառք։ [2]Զի փոխեցին զիրաւունս իմ ընդ
անիրաւութեանն հեթանոսաց, եւ զօ-
րէնս իմ ընդ օրէնս աշխարհացն" որ
շուրջ էին զնովաւ. զի զիրաւունս իմ
մերժեցին, եւ յօրէնս իմ ոչ գնացին։
7 Վասն այսորիկ այսպէս ասէ Ադոնայի
Տէր. Փոխանակ զի [3]սրտաճաք ձեր
յազգացդ են" որ շուրջ են զձեւք, եւ
յօրէնս իմ ոչ գնացէք, եւ զիրաւունս
իմ ոչ արարէք, այլ եւ ոչ ըստ իրա-
ւանցն հեթանոսաց՝ որ շուրջ են զձեւք՝
8 արարէք, Վասն այսորիկ այսպէս ասէ
Ադոնայի Տէր. Ահաւասիկ ես ի վերայ
քո, եւ արարից ի միջի քում դատաս-
9 տան առաջի ազգացդ։ Եւ արարից ընդ
քեզ՝ զոր ոչ երբեք արարի, եւ ոչ այլ
եւս նմին նման արարից ըստ ամենայն
10 պղծութեանցն քոց։ Վասն այնորիկ
հարք կերիցեն զորդիս ի միջի քում, եւ
որդիք կերիցեն զհարս. եւ արարից ի
քեզ դատաստանս, եւ ցրուեցից զամե-
նայն մնացորդս քո ընդ ամենայն հողմս։
11 Վասն այդորիկ կենդանի եմ ես, ասէ
Ադոնայի Տէր, փոխանակ զի զսրբու-
թիւնս իմ պղծեցեր ամենայն պարշե-
լեօքն քովք, եւ ամենայն պղծալից
պաշտամամբքն քովք, եւ ես մերժեցից
զքեզ, եւ ոչ խնայեսցէ ի քեզ ակն իմ,
12 եւ ոչ ողորմեցայց քեզ։ [4]Չորիր մասն
քո մահու սատակեսցի, եւ [1]չորիր մասն
քո" սովով վախճանեսցի ի միջի քում. եւ
[4]չորիր մասն քո շուրջ զքեւ ի սուր
անկցի, եւ [5]զչորիր մասն քո ընդ ամե-
նայն հողմս ցրուեցից, եւ սուր արձա-
13 կեցից զկնի նոցա։ Եւ կատարեսցի
սրտմտութիւն [6]բարկութեան իմոյ" ի
վերայ նոցա, եւ մխիթարեցայց. եւ

[1] Եբր. [illegible] [2] Եբր. Եւ փոխեաց զիրաւունս իմ յանիրաւութիւն քան զհեթանոսս, եւ զօրէնս իմ քան զաշխարհսն [3] Եբր. ապստամբ եղէրուք քան զազգս [4] Եբր. Երիր [5] Եբր. զերիր [6] Եբր. իմ, եւ հանգուցից զբարկութիւն իմ

ծանիցեն զի ես Տէր խօսեցայ նախան-
ձու իմով՝ ի կատարել ինձ զբարկու-
14 թիւն իմ ի վերայ նոցա։ Եւ եդից զքեզ
յանապատ եւ ի նախատինս հեթանո-
սաց որ շուրջ զքեւ իցեն՝ [1]եւ զդստերս
քո շուրջ զքեւ" առաջի ամենայն ան-
15 ցաւորաց ճանապարհի։ Եւ եղիցես հե-
ծեծելի եւ եղկելի, ծաղր եւ երեւոյթ
ի մէջ ազգացն որ շուրջ զքեւ իցեն,
յառնել ինձ ի քեզ դատաստանս բարկու-
թեամբ եւ սրտմտութեամբ եւ վրէժ-
խնդրութեամբ ցասման. ես Տէր խօ-
16 սեցայ ի յարձակել ինձ զչարաչար զնետս
[1]իմ սովոյ ի վերայ նոցա, եւ եղիցին ի
սատակումն. արձակեցից զայս [7]ի վե-
րայ նոցա", եւ սով գումարեցից ի վե-
րայ ձեր, եւ [8]խորտակեցից զհաստա-
17 տութիւն հացի [1]քո։ Եւ առաքեցից ի
վերայ [9]քո սով եւ գազանս չարս, եւ
[10]սատակեսցեն զքեզ. եւ մահ եւ արիւն
անցցեն ի քեզ, եւ ածից շուրջ զքեւ
սուր, զի ես Տէր խօսեցայ։

Գլ. Զ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, հաստատեա զերեսս քո
ի վերայ լերանցդ Իսրայելի, մարգա-
3 րեաց ի վերայ նոցա, Եւ ասասցես, Լե-
րինք Իսրայելի, լուարուք զպատգամս
Ադոնայի Տեառն. այսպէս ասէ Ադո-
նայի Տէր ցլերինս եւ ցբլուրս եւ ցձորս
եւ ցդաշտս. Ահաւադիկ ես ածեմ ի վե-
րայ ձեր սուր, եւ [11]ապականեսցին բար-
4 ձունք" ձեր. Եւ կործանեսցին սեղանք
ձեր, եւ խորտակեսցին մեհեանք ձեր.
եւ տապաստ արկից զվիրաւորս ձեր ա-
5 ռաջի կռոց ձերոց։ Եւ դի թաւալ կա-
ցուցից զորդիսդ Իսրայելի առաջի պատ-
կերաց իւրեանց. եւ ցրուեցից զոս-
կերս ձեր շուրջ զսեղանովք ձերովք։
6 Յամենայն բնակութեան ձերում քա-
ղաքք աւերեսցին, եւ բարձունք ա-
պականեսցին, զի ջնջեսցին եւ պակա-
սեսցին սեղանք ձեր, եւ խորտակեսցին
եւ դադարեսցին կուռք ձեր, եւ բարձ-
ցին մեհեանք ձեր, եւ ջնջեսցին գործք
7 ձեռաց ձերոց. Եւ անկցին վիրաւորք ի
միջի ձերում, եւ ծանիջիք թէ ես եմ
Տէր։

[7] Եբր. ի սատակումն ձեր [8] Եբր. խորտակեցից ձեզ [9] Եբր. ձեր [10] Եբր. անզաւակեսցեն [11] Եբր. ապականեցից զբարձունս

8 Եւ թողից ի ձէնջ ապրեալս ի սրոյ ի
մէջ ազգաց ի վարատման ձերում ի մէջ
9 աշխարհաց ։ Եւ յիշեսցեն զիս ապրեալքն
ձեր ի մէջ ազգաց ուր գերեցան ի նո-
սա . [1]զի երդուայ ես՚՚ սրտի նոցա շնա-
ցելոյ եւ ապստամբելոյ յինէն , եւ աչաց
նոցա պոռնկացելոց զհետ [2]գնացից իւ-
րեանց , եւ կոծեսցեն յերեսս իւրեանց ,
վասն չարեացն զոր արարին յամենայն
գարշելիսն իւրեանց [3]եւ յամենայն ի
10 գնացս իւրեանց՚՚ ։ Եւ ծանիցեն թէ ես
եմ Տէր , եւ ոչ ի զուր ինչ խօսեցայ
առնել ընդ նոսա զայս ամենայն չարիս ։
11 Այսպէս ասէ Ադոնայի Տէր . Ծափս հար
ձեռամբ , եւ գոփեա ոտամբ , եւ ասասցես, Վա՛շ վա՛շ ի վերայ [4]գարշելեացն ե-
չարեաց՚՚ տանն Իսրայէլի , զի սրով եւ
12 մահուամբ եւ սովով անկցին ։ Հեռա-
ւորն մահու վախճանեսցի , եւ մերձա-
ւորն սրով անկցի , եւ մնացեալն եւ
պաշարեալն սովով սատակեսցին , եւ կա-
տարեցից զբարկութիւն իմ ի վերայ նո-
13 ցա ։ Եւ [5]ծանիցեն թէ ես եմ Տէր , յոր-
ժամ անկցին վիրաւորքն [6]ձեր ի մէջ
կռոցն [6]ձերոց , շուրջ զսեղանովքն [6]ձե-
րովք , ի վերայ ամենայն բլրոցն բար-
ձանց եւ յամենայն գլուխս լերանց , եւ
ի ներքոյ ամենայն վարսաւոր ծառոց , եւ
ի ներքոյ ամենայն ամուր կաղնեաց՝ ուր
արկանէին խունկս ամենայն կռոցն իւ-
14 րեանց ։ Եւ ձգեցից զձեռն իմ ի վերայ
նոցա , եւ եդից զերկիրն յապականու-
թիւն եւ ի սատակումն յանապատէն
Դեբղաթայ յամենայն բնակութեան նո-
ցա . եւ ծանիջիք թէ ես եմ Տէր ։

Գլ. Է

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ ,
2 Եւ դու , որդի մարդոյ , [3]ասասցես , Այս-
պէս ասէ Ադոնայի Տէր երկրիդ Իս-
րայելացւոց . Վախճան հասեալ է , հա-
սեալ է վախճան ի վերայ չորեցունց
3 կողմանց երկրիդ ։ Անհաւադիկ հասեալ է
ի վերայ քո վախճան, եւ առաքեցից ես
զսրտմտութիւն իմ, եւ դատեցայց զքեզ
ըստ ճանապարհաց քոց , եւ հատուցից քեզ
4 ըստ ամենայն գարշելեացն քոց ։ Եւ ոչ
խնայեսցէ ակն իմ ի քեզ եւ ոչ ողոր-
մեցայց . զի ըստ գնացից քոց հատու-
ցից քեզ , եւ գարշելիքն քո ի միջի քում
եղիցին , եւ ծանիցես թէ ես եմ Տէր ։
5 Քանզի այսպէս ասէ Տէր Տէր. Չարիք
մի , ահաւասիկ չարիք մի հասեալ են ։
6 Եհաս վախճան[7]. զարթեաւ ի վերայ քո ,
7 [8]ահաւադիկ հասեալ է ։ Զմբաղ՚՚ ի վե-
րայ քո , որ բնակեալդ ես յերկրիդ .
հասեալ է ժամանակ , մերձեցաւ [9]օր, եւ
8 ոչ աղմկաւ եւ ոչ երկամբք՚՚ ։ Այլ այժմ
ի մօտոյ հեղից զբարկութիւն իմ ի վե-
րայ քո , եւ կատարեցից ի քեզ զսրտ-
մտութիւն իմ . եւ դատեցայց զքեզ ըստ
ճանապարհաց քոց , եւ տաց ի վերայ քո
զամենայն պղծութիւնս [10]պաշտամանց
9 քոց՚՚ ։ Եւ մի՛ խնայեսցէ ակն իմ ի քեզ
եւ ոչ եւս ողորմեցայց . զի ըստ ճանա-
պարհաց քոց հատուցից քեզ , եւ գար-
շելիքդ քո ի միջի քում եղիցին . եւ ծա-
նիցես թէ ես եմ Տէր որ [11]հարկանեմ
10 զքեզ ։ Ահաւասիկ օր Տեառն , ահա
հասեալ է վախճան . ել՚ն զմբաղն՚՚,
ծաղկեցաւ գաւազանն . [12]յարեաւ ամ-
11 բարտաւանութիւնն ։ Եւ խորտակեսցէ
զհաստատութիւն անօրինին , ոչ աղմկաւ
եւ ոչ փութով. ոչ են ի միոս իւրեանց՚՚,
12 եւ ոչ գեղեցկութիւն ի նոսա ։ Հասեալ
է ժամանակ , ահա եկն օր . ստացօղն
մի՛ խնդասցէ , եւ որ վաճառէն՝ մի՛ ող-
բասցի . զի բարկութիւն է յամենայն
13 բազմութեան նորա ։ Զի որ [13]ստանայն՝
ի վաճառականն՚՚ անդր այլ մի՛ դարձցի ,
[14]եւ ոչ եւս է կեալ ի կենդանութեան
նոցա՚՚. զի տեսիլս ի վերայ ամենայն
բազմութեան նորա ոչ դարձցի , եւ մարդ
[15]յաչս կենաց իւրոց մի՛ հաստատեսցի ։
14 Փող [16]հարէք եւ ընտրեցէք՚՚ զամե-
նայն . եւ ոչ ոք իցէ որ երթայցէ ի պա-
տերազմ, զի բարկութիւն[17] ի վերայ բազ-
15 մութեան նորա ։ Պատերազմ սրոյ ար-
տաքուստ , եւ սով եւ մահ ի ներքուստ .
եւ որ ի դաշտի իցեն՝ սրով վախճանես-
ցին , եւ որ ի քաղաքի իցեն՝ սովով եւ

[1] Եբր. յորժամ տաց բեկանել [2] Եբր. կռոց [3] ՅԵբր. ղ–լ–ւէ [4] Եբր. ամենայն գարշելեացն չարաց [5] Եբր. ծանիջիք [6] Եբր. նոցա

[7] Եբր–յեցին յ–ելու , եհաս վախճան [8] Եբր. ահա եկն։(7)Եկն վճիռ , ժ–մ, կարգ [9] Եբր. օր աղմկի, եւ ոչ ցնծութիւն լերանց [10] Եբր. քո [11] Եբր. հարկանեմ։ (10)Ահաւասիկ օրն . ահա հասեալ է. եկն վճիռ (ժամ, կարգ) [12] Եբր. բողբոջեցաւ ամբարտաւանութիւնն ։ (11) Բռնութիւն յարեաւ ի գաւազան անօրէնութեան . չիք ի նոցանէ , եւ ոչ ի բազմութենէ նոցա , եւ ոչ յընչից նոցա [13] Եբր. վաճառէն՝ ի վաճառեալ [14] Եբր. թէպէտ եւ իցեն տակաւին ի կենդանիս [15] Եբր. յանօրէնութեան [16] Եբր. հարին եւ կազմեցին [17] Եբր–յեցին յ–ելու , իմ

16 մահուամբ վախճանեսցին։ Եւ ապրեսցին
որք ապրելոց իցեն ի նոցանէ, եւ եղի-
ցին ի վերայ լերանց իբրեւ զաղաւնիս
[1]անձանձրոյթ մնչել. զամենեսեան կո-
տորեցից՝ զիւրաքանչիւր" ոք յանօրէ-
17 նութեան իւրում։ Ամենայն ձեռք լքցին,
եւ ամենայն [2]երանք պղծեսցին խոնա-
18 ւութեամբ"։ Սփածցին քուրձս, եւ ծած-
կեսցեն զնոսա ցնորք. յամենայն երեսս
ամօթ, եւ յամենայն գլուխս կնգու-
19 թիւն։ Արծաթ նոցա անկեալ կայցէ ի
հրապարակս, եւ ոսկի նոցա արհամար-
հեսցի. արծաթ նոցա եւ ոսկի նոցա ոչ
կարասցէ փրկել զնոսա յաւուր բար-
կութեան Տեառն. եւ անձինք նոցա մի՛
յագեսցին, եւ որովայնք նոցա մի՛ լցցին.
զի [3]տանջանք եղեն" անիրաւութեան
20 նոցա։ Զընտիր ընտիր [4]զարդուցն եդին
ի հպարտութիւն, եւ պատկերս գարշե-
լեաց պաշտամանցն իւրեանց արարին
ի նոցանէ. վասն այնորիկ տաց զայն
21 նոցա ի պղծութիւն. Եւ մատնեցից զայն
ի ձեռս օտարաց յափշտակել [5]զնոսա,
եւ ժանտագործաց երկրի յաւար, եւ
22 պղծեսցեն [6]զնոսա։ Եւ դարձուցից զե-
րեսս իմ ի նոցանէ, եւ պղծեսցեն [7]զայ-
ցելութիւնս իմ, եւ մտցեն ի նոսա
անխտիր. եւ պղծեսցեն զնոսա"։
23 [8]Եւ արասցեն խառնակութիւն". զի լցաւ
երկիր ի դատաստանաց [9]արեանց նոցա,
եւ քաղաքք լի եղեն" անօրէնութեամբք։
24 Եւ ածից զչարս ազգաց եւ ժառանգես-
ցեն զտունս նոցա, եւ կործանեցից զամ-
բարտաւանութիւն բռնութեանց նոցա,
25 եւ պղծեսցին սրբութիւնք նոցա։ Ե-
կեսցէ [10]քաւութիւն, եւ խնդրեսցեն
26 զխաղաղութիւն, եւ ոչ գտանիցի։ Վայ
ի վայի վերայ եղիցի, եւ գոյժ ի գուժի.
խնդրեսցին տեսիլք ի մարգարէից, եւ
օրէնք [11]զլերինջք ի քահանայէ, եւ խոր-
հուրդք ի ծերոց, [5]եւ ոչ գտանիցին"
27 Թագաւորն սգասցի, եւ իշխանն զգես-
ցի զապականութիւն, եւ ձեռք ժո-
ղովրդեան երկրին լքցին. ըստ ճանա-
պարհաց նոցա արարից նոցա, եւ ըստ
դատաստանաց նոցա առից վրէժ ի նո-
ցանէն, եւ ծանիցեն թէ ես եմ Տէր։

## ԳԼ. Ը

1 Եւ եղեւ յամին վեցերորդի յամսեանն
[12]հինգերորդի, որ օր հինգ էր ամսոյն,
ես նստէի ի տան իմում, եւ ծերքն Յու-
դայ նստէին առաջի իմ. եւ եղեւ ի վե-
րայ իմ անդ ձեռն Ադոնայի Տեառն,
2 Եւ տեսանէի, եւ ահա նմանութիւն
[13]առն, ի միջոյն եւ ի խոնարհ՝ հուր, եւ
ի միջոյն եւ ի վեր՝ իբրեւ զտեսիլ օդոյ,
3 իբրեւ զգոյն" բազմագունի ականն։ Եւ
ձգեաց նմանութիւն ձեռին եւ առ զգա-
գաթամբ գլխոյ իմոյ. եւ վերացոյց զիս
Ոգի ընդ երկինս եւ ընդ երկիր, եւ տա-
րաւ զիս յԵրուսաղէմ ի տեսլեանն Աս-
տուծոյ, եւ [5]կացոյց զիս" ի նախադրունս
դրանն ներքնոյ որ հայի ընդ հիւսիսի,
ուր էր արձան պատկերի նախանձու
4 [14]ստացողին։ Եւ անդ էին փառք Աս-
տուծոյ Իսրայէլի, ըստ տեսլեանն զոր
տեսի ի դաշտի անդ։
5 Եւ ասէ ցիս, Որդի մարդոյ, հայեաց
աչօք քովք ի կողմն հիւսիսոյ։ Համ-
բարձի զաչս իմ ի կողմն հիւսիսոյ, եւ
ահա ի հիւսիսոյ կողմանէ [15]ի վերայ դրան
սեղանոյն կայր պատկերն նախանձու ի
մուտս դրանն [6]որ հայէր ընդ արեւելս"։
6 Եւ ասէ ցիս, Որդի մարդոյ, տեսանե՞ս
զինչ գործեն դոքա աստ, անօրէնու-
թիւն [16]մեծ տունդ Իսրայէլի, հեռանալ
ի սրբութեանց իմոց. դարձեալ՝ եւս մե-
ծամեծս քան զայս տեսցես անօրէնու-
թիւնս։
7 Եւ եմոյծ զիս առաջի դրաց [17]սրահին,
8 եւ տեսի, եւ ահա ծակ մի յորմն։ Եւ
ասէ ցիս, Որդի մարդոյ, բրեա զորմդ.
եւ բրեցի զորմն, եւ ահա դուռն մի։
9 Եւ ասէ ցիս, [18]Որդի մարդոյ, մուտ տես
զանօրէնութիւնսդ եւ զչարիսդ" զոր
10 գործեն դոքա այդր։ Մտի եւ տեսի, եւ
ահա ամենայն նմանութիւն սողնոյ եւ
անասնոյ, ունայնի գարշելեաց. եւ տեսի
զամենայն կուռս տանն Իսրայէլի նկա-
11 րեալ [19]շուրջ զնոքօք"։ Եւ եւթանասուն

[1] Եբր. հովտաց. ամենեքին նոքա մնչեն՝ իւրա-
քանչիւր [2] Եբր. ծունկ եղիցի իբրեւ զջուր
[3] Եբր. գայթակղութիւն եղեւ [4] Եբր. զարդուց
նորա [5] Յեբր. պակասէ [6] Եբր. զայն [7] Եբր.
զգաղտնիս իմ, եւ մտցեն անդր բռնաւորք, եւ
պղծեսցեն զայն [8] Եբր. Արա զշղթայն [9] Եբր.
արեան, եւ քաղաքն լի եղեւ [10] Եբր. կործա-
նումն [11] Եբր. կորիցեն

[12] Եբր. վեցերորդի [13] Եբր. իբրեւ տեսլեան հրոյ.
ի տեսլենէ միջաց նորա եւ ի խոնարհ՝ հուր. և
ի միջաց նորա եւ ի վեր՝ իբրեւ զտեսիլ պայծա-
ռութեան, իբրեւ [14] Եբր. որ նախանձեցու-
ցանէ. [15] Եբր. առ [16] Եբր. մեծ գործէ [17] Եբր.
գաւթին [18] Եբր. Մուտ տես զանհնարին
պղծութիւնսն [19] Եբր. յորմն շուրջանակի

այր ի ծերոց անտի տանն Իսրայէլի, եւ
Յեզոնիա որդի Սափանայ ի մէջ նոցա՝
կայր առաջի նոցա. եւ իւրաքանչիւր
բուրուառ ի ձեռին իւրում, եւ ծուխ
խնկոյն ելանէր դիզանէր իբրեւ զամպ։
12 Եւ ասէ ցիս Տէր, Որդի մարդոյ, տե-
սանե՞ս զինչ ծերք տանդ Իսրայէլի գոր-
ծեն այդր ընդ խաւար, իւրաքանչիւր
ի ծածուկ [1]ի սենեկի իւրում. զի ասեն,
13 Եթող Տէր, եւ ոչ հայի յերկիր։" Եւ
ասէ ցիս, Դարձեալ՝ եւս մեծամեծ [2]ա-
նօրէնութիւնս տեսցես՝ զոր գործեն դո-
14 քա։ Եւ եմոյծ զիս առաջի դրանն տանն
Տեառն, որ հայէր ընդ հիւսիս. եւ ա-
հա նստէին անդ կանայք եւ ողբային
15 զԹամուզ։ Եւ ասէ ցիս, Տեսանե՞ս զայդ,
որդի մարդոյ. դարձեալ՝ եւս մեծամեծ
[2]գործս քան զայդ տեսանիցես։
16 Եւ եմոյծ զիս ի ներքին [3]սրահ տանն
Տեառն, եւ ահա [4]ի վերայ դրաց տաճարին
Տեառն ընդ սեղանն եւ ընդ մանուածն"
իբրեւ արք քսանեւհինգ, որոց զթի-
կունս ի տաճարն Տեառն դարձուցեալ
էր, եւ զերեսս ընդ արեւելս, եւ երկիր
17 պագանէին [5]արեգականն։ Եւ ասէ ցիս,
Տեսե՞ր զայդ, որդի մարդոյ. միթէ փո՞քր
ինչ իցէ [6]անօրէնութիւն տանդ Իսրա-
յէլի" զոր գործեն աստ, զի լցին զեր-
կիրդ անօրէնութեամբք, եւ դարձան ի
բարկացուցանել զիս. եւ ահա ձգեն
[7]զբազուկ ուռթոյն ընդ արհամարհանս"։
18 Եւ ես արարից ընդ նոսա բարկութեամբ,
եւ ոչ խնայեսցէ ակն իմ, եւ ոչ ողոր-
մեցայց նոցա. եւ աղաղակեսցեն յա-
կանջս իմ մեծաձայն, եւ ոչ լուայց նոցա։

Գլ. Թ

1 Եւ աղաղակեաց յականջս իմ մեծա-
ձայն եւ ասէ, Մերձեալ է վրէժխնդրու-
թիւն քաղաքիդ. եւ իւրաքանչիւր ոք
զգործի սատակման ի ձեռին իւրում ու-
2 նէր։ Եւ ահա արք վեց գային ընդ ճա-
նապարհ բարձու դրանն՝ որ հայի ընդ
հիւսիս, եւ իւրաքանչիւր [8]տապար ի
ձեռին իւրում. եւ այր մի ի մէջ նոցա
զգեցեալ պճղնաւոր, եւ [9]կամար ակա-
նակապ յականց շափիղայ" ընդ մէջ իւր.
եւ մտին կային առաջի պղնձի սեղա-
3 նոյն։ Եւ փառքն Աստուծոյ Իսրայէլի
վերացան ի քերովբէից [10]յօդն որ ի մէջ
տաճարին". եւ կոչեաց զայրն որ զգե-
ցեալ էր զպճղնաւորն, եւ ունէր [11]զկա-
4 մարն ընդ մէջ իւր. Եւ ասէ ցնա Տէր,
Անց ընդ մէջ քաղաքիդ Երուսաղեմի,
եւ գիր նշան ի ճակատ արանցդ որ հե-
ծեն եւ յոգւոց հանեն ի վերայ [12]անօրէ-
5 նութեանցն գործելոց ի մէջ դոցա։ Եւ
ցնոսա ասէ՝ ինձ լու ի լու, Գնացէք զհետ
նորա ի քաղաքն, եւ կոտորեցէք. եւ մի՛
խնայեսցեն աչք ձեր, եւ մի՛ [13]ողորմես-
6 ջիք Ծերոյն եւ տղայոյն, կուսին եւ ե-
րիտասարդին", եւ զկանայս կոտորե-
ջիք ի սատակումն, բայց յորոյ վերայ
նշանն իցէ մի՛ մերձենայցէք. եւ սկիզբն՝
ի սրբութեանց իմոց արասջիք։ Եւ սկսան
յարանց ծերոց որ էին [14]ի ներքս ի տա-
7 ճարին"։ Եւ ասէ ցնոսա, Պղծեցէք զտունդ,
եւ լցէք [15]զտունդ դիակամբք, եւ ելէք։
Եւ ելեալ կոտորեցին զքաղաքն։
8 Եւ եղեւ ի կոտորելն զնոսա՝ [16]հայեցայ
եւ տեսի", եւ անկայ ի վերայ երեսաց ի-
մոց, աղաղակեցի եւ ասեմ, Վա՜յ ինձ,
Ադոնայի Տէր, ջնջե՞ս դու ուադիկ
զմնացորդս [17]տանդ Իսրայէլի, ի հեղուլ
զբարկութիւն քո ի վերայ Երուսաղե-
9 մի։ Եւ ասէ ցիս, Անիրաւութիւն տանդ
Իսրայէլի եւ Յուդայ մեծացաւ յոյժ
յոյժ, [18]զի լցաւ երկիրդ ժողովրդովք
բազմօք", եւ քաղաքդ լի եղեւ [17]անօ-
րէնութեամբ եւ" պղծութեամբ. զի ա-
սացին եթէ Եթող Տէր զերկիրդ, եւ ոչ
10 եւս հայի Տէր։ Եւ արդ ոչ խնայեսցէ
ակն իմ, եւ ոչ ողորմեցայց, այլ ըստ
ճանապարհաց նոցա տաց ի գլուխս նոցա։
11 Եւ ահա այրն որ զգեցեալն էր զպճղնա-
ւորն, եւ ունէր [11]զկամարն ընդ մէջ իւր,
պատասխանի ետ եւ ասէ, Արարի որ-
պէս եւ հրամայեցեր ինձ։

---

[1] Ոմբ. ի սենեկի իւրում պատկերաց. զի ասեն՝ Ոչ տեսանէ զմեզ Տէր. եթող Տէր զերկիր։ [2] Ոմբ. պղծութիւնս [3] Ոմբ. գաւիթ [4] Ոմբ. առ դրան տաճարին Տեառն ընդ սրահն և ընդ սեղանն [5] Ոմբ. յարեւելս կոյս արեգական [6] Ոմբ. տանդ Յուդայ առաւել պղծութիւնն [7] Ոմբ. զոստն ընդ քիթ իւրեանց [8] Ոմբ. զանօթ կորստեան իւրոյ

[9] Ոմբ. կաղամար դպրի [10] Ոմբ. յորոց վերայ էին՝ ի սեամս տանն [11] Ոմբ. զկաղամարն [12] Ոմբ. ամենայն պղծութեանցն [13] Ոմբ. ողորմեսջիք։ (6) Զծեր, զերիտասարդ եւ զկոյս եւ զմանկտի [14] Ոմբ. առաջի տանն [15] Ոմբ. զգաւիթսն [16] Ոմբ. եւ մնացի ես [17] Ոմբ. [illegible] [18] Ոմբ. եւ լցաւ երկիրդ արեամբ

## Գլ. Ժ

1 Եւ տեսանէի, եւ ահա ի վերայ հաստա-
տութեանն որ էր ի վերայ գլխոյ քե-
րովբէիցն իբրեւ զվէմ շափիղայ ական,
եւ ի վերայ նոցա նմանութիւն աթո-
2 ռոյ։ Եւ ասէ ցայրն որ զգեցեալն էր
զպատմուճանն, Մուտ ի մէջ անուոցդ
ի ներքոյ քերովբէիցդ, եւ լից զափս
քո կայծակամբք հրոյ ի միջոյ քերով-
բէիցդ, եւ ցանեա ի վերայ քաղաքիդ.
3 եւ եմուտ առաջի իմ։ Եւ քերովբէքն
կային ընդ աջմէ տաճարին ի մտանել
առնն. եւ ամպն ելից [1]զսրահն ներքին։
4 Եւ փառքն Տեառն վերացան ի քերով-
բէից անտի [2]յօդն որ ի տաճարին". եւ
տաճարն լի եղեւ ամպով, եւ [3]սրահն
5 լի եղեւ լուսով փառացն Տեառն։ Եւ ձայն
թեւոց քերովբէիցն լսելի լինէր մինչեւ
ի [3]սրահն արտաքին իբրեւ զձայն Աս-
6 տուծոյ [4]Սադայի՝ որ խօսէր։ Եւ եղեւ
մինչդեռ տայր պատուէր առնն որ զգե-
ցեալ էր զպատմուճանն [5]սուրբ, եւ ա-
սէր, Ա՛ռ հուր ի միջոյ անուոցդ ի մի-
ջոյ քերովբէիցդ. եւ եմուտ եւ եկաց ի
7 մէջ անուոցն։ Եւ ձգեաց քերովբ մի
զձեռն իւր ի միջոյ քերովբէիցն ի մէջ
հրոյն որ էր ի մէջ քերովբէիցն, առ եւ
ետ ի ձեռս նորա որ զգեցեալ էր զպատ-
8 մուճանն [5]սուրբ. առ եւ ել անտի։ [6]Հայէի
ընդ քերովբէսն, եւ տեսանէի" նմա-
նութիւն ձեռաց մարդոյ ի ներքոյ
թեւոց նոցա։
9 Տեսանէի, եւ ահա անիւք չորք կա-
յին մերձ առ քերովբէսն, մի մի անիւ
զհետ միոյ միոյ քերովբէի. եւ տեսիլ
անուոցն իբրեւ զտեսիլ ական կարկե-
10 հանի։ Եւ տեսիլ նոցա [7]եւ նմանու-
թիւն" չորեցունց՝ որպէս զի իցէ [6]տե-
11 սանել անիւ ի մէջ անուոյ։ Եւ ի գնալն
իւրեանց՝ ի չորեսին կողմանս իւրեանց
գնային, եւ յետս ընդդէմ ոչ դառնա-
յին, զի յոր կողմն հայէր մի առաջին,
զհետ նորա երթային եւ յետս ընդդէմ
12 ոչ դառնային։ Եւ ամենայն մարմինք
իւրեանց եւ[8] ձեռք եւ թեւք նոցա եւ
անիւք լի էին աչօք՝ շուրջ զչորեքումբք
13 անուոցն նոցա։ Եւ անուոցն անուն՝
կոչեցաւ [9]Գեղգեղ, իմով լսել լսե-
14 լով։ Եւ չորք դէմք միոյ. դէմք միոյն՝
դէմք քերովբէի, եւ դէմք երկրորդին՝
դէմք մարդոյ, եւ դէմք երրորդին՝ դէմք
առիւծու, եւ դէմք չորրորդին՝ դէմք
15 արծուոյ։ Եւ վերացան քերովբէքն։ Այս
այն [10]գազան է զոր տեսի ի վերայ Քո-
16 բար գետոյ։ Եւ ի գնալ քերովբէիցն՝
գնային եւ անիւքն զհետ նոցա. եւ յամ-
բառնալ քերովբէիցն զթեւս իւրեանց
ի վերանալն յերկրէ՝ ոչ դառնային յետս
17 անիւքն. քանզի զհետ նոցա էին։ Ի
կալն նոցա՝ կայէին, եւ յամբառնալ
նոցա՝ ընդ նոսին վերանային. զի ոգի
[11]կենդանութեան էր ի նոսա։
18 Եւ ելին փառքն Տեառն [12]ի միջնօդոյ
տաճարին, եւ նստան ի վերայ քերով-
19 բէիցն։ Եւ ամբարձին քերովբէքն զթեւս
իւրեանց, եւ վերացան յերկրէ առաջի
իմ. յելանելն նոցա եւ անիւքն զհետ
նոցա, եւ կացին առաջի դրանդեաց դրան
տանն Տեառն որ հայէր ընդ արեւելս,
եւ փառքն Աստուծոյ Իսրայէլի ի վերայ
20 նոցա։ Այս այն կենդանի է զոր տեսի ի
ներքոյ Աստուծոյ Իսրայէլի ի վերայ Քոբար
գետոյ, եւ գիտացի թէ այն քերովբէք
21 են։ Չորք չորք դէմք միոյ միոյ, եւ [13]ութ
թեւք միոյ միոյ, եւ նմանութիւն ձե-
22 ռաց մարդոյ ի ներքոյ թեւոց նոցա։ Եւ
նմանութիւն երեսաց [14]նոցա. այս դէմք
են զոր տեսի ի ներքոյ փառացն Աս-
տուծոյ Իսրայէլի" ի վերայ Քոբար գե-
տոյ, զտեսիլ նոցա եւ զնոսա. զի ըստ
իւրաքանչիւր դիմաց գնային։

## Գլ. ԺԱ

1 Եւ ամբարձ զիս Հոգի, եւ ած զիս յան-
դիման դրան տանն Տեառն որ հայէր
ընդ արեւելս. եւ ահա առաջի դրան
[15]սրահին արք իբրեւ քսան եւ հինգ, եւ
տեսի ի մէջ նոցա զՅեզոնիա զորդի Յա-
զերայ եւ զՓաղտիա Բանեայ՝ զառաջ-
նորդս ժողովրդեանն։
2 Եւ ասէ ցիս [16]Տէր, Որդի մար-
դոյ, այս արք են որ խորհին ունայնս,
եւ տան խրատ չար ի քաղաքիդ

---

[1] Ոմնք. զգաւիթն [2] Ոմնք. ի սեամս անդր տանն [3] Ոմնք. գաւիթն [4] Այլք՝ Ամենակալի [5] Ոմնք. [illegible] [6] Ոմնք. Եւ երեւեցաւ ի մէջ քերովբէիցն [7] Ոմնք. նմանութիւն մի [8] Ոմանք յաւելուն, թիկունք իւրեանց եւ

[9] Այլք՝ Յեղյեղուկ [10] Ոմնք. կենդանի [11] Կամ, կենդանեացն [12] Ոմնք. ի վերայ քան զսեամս [13] Ոմնք. չորք [14] Ոմնք. այնոցիկ էր նմանութիւն երեսացն զորս տեսի

3 յայդմիկ, Եւ ասեն, Ոչ [1]եթէ նո-
րոգ ինչ շինեալ են տունքս, այլ՝՝ սա է
4 կաթսայ եւ մեք միս։ Վասն այդորիկ
մարգարեաց ի վերայ նոցա, մարգարեաց,
5 որդի մարդոյ։ Եւ եհաս ի վերայ իմ Հո-
գի Տեառն եւ ասէ ցիս, Այսպէս ասէ [2]Ա-
դոնայի Տէր. Այդպէս ասացէք, տունդ
Իսրայէլի, եւ զխորհուրդ ոգւոց ձերոց
6 ես գիտեմ։ Յաճախեցէք զդիակունս ձեր
ի քաղաքիդ յայդմիկ, եւ լցէք զճանա-
7 պարհս դորա վիրաւորօք։ Վասն այդորիկ
այսպէս ասէ Ադոնայի Տէր. Զդիակունս
ձեր զոր [3]կոտորէիք ի միջի դորա, նո-
քա միսն են, եւ կաթսայն դա է. եւ
8 զձեզ հանից ի միջոյ դորա։ Ի սրոյ
երկնչէիք, սուր ածից ի վերայ ձեր, ա-
9 սէ Ադոնայի Տէր։ Եւ հանից զձեզ ի
միջոյ դորա, եւ մատնեցից զձեզ ի ձեռս
օտարաց, եւ արարից ի ձեզ դատաս-
10 տան. Զի անկանիցիք ի սուր. եւ ի վե-
րայ [4]լերանց Իսրայէլի դատեցայց զձեզ,
11 եւ ծանիջիք թէ ես եմ Տէր։ Եւ դա չիցէ
ձեզ կաթսայ, եւ դուք չլինիցիք ի դմա
միս. ի վերայ [4]լերանցն Իսրայէլի դա-
12 տեցայց զձեզ, Եւ գիտասջիք թէ ես եմ
Տէր. զի [5]ըստ արդարութեանց իմոց՝՝
դուք ոչ գնացէք, եւ զիրաւունս իմ
դուք ոչ արարէք. այլ ըստ կրօնից ազ-
գացն որ շուրջ զձեւք էին՝ արարէք։
13 Եւ եղեւ մինչդեռ մարգարէանայի՝
մեռաւ Փաղտիա որդի Բանեայ. անկայ
ի վերայ երեսաց իմոց, եւ ի ձայն մեծ
աղաղակեցի, եւ ասեմ, Վա՛յ ինձ, վա՛յ
ինձ, Ադոնայի Տէր, զի ի կատարած
14 հասուցեր զմնացորդս Իսրայէլի։ Եւ ե-
15 ղեւ բան Տեառն առ իս եւ ասէ. Որդի
մարդոյ, եղբարք [6]քո եւ արք գերու-
թեան քո եւ ամենայն տունդ Իսրա-
յէլի հասեալ են ի վախճան՝՝, որոց ա-
սացին բնակիչքն Երուսաղեմի, Ի բաց
մերժեցարուք ի Տեառնէ, զի մեզ տուեալ
է զերկիրդ ի ժառանգութիւն։
16 Վասն այնորիկ ասա, Այսպէս ասէ
Ադոնայի Տէր, Թէ մերժեցից զնոսա
յազգս, եւ ցրուեցից զնոսա ընդ ամե-
նայն երկիր. եւ եղէց նոցա փոքր մի
ի սրբութիւն ի գաւառսն յոր մտանիցեն
17 ի նոսա։ Վասն այնորիկ ասա, Այսպէս
ասէ Ադոնայի Տէր. Եւ ընկալայց [7]զնոսա
յազգացն, եւ ժողովեցից [7]զնոսա ի գա-
ւառացն ուր [8]ցրուեցից զնոսա՝՝ ի նոսա,
18 եւ տաց [9]նոցա զերկիրն Իսրայէլի։ Եւ
մտցեն անդր, եւ բարձցեն զամենայն
զարշելիս նորա, եւ զամենայն [10]զանօրէ-
19 նութիւնս նորա ի նմանէ։ Եւ տաց նոցա
սիրտ [11]այլ, եւ ոգի նոր պարգեւեցից
նոցա՝՝. եւ հանից զսիրտն քարեղէն ի
մարմնոյ նոցա, եւ տաց նոցա սիրտ
20 մարմնեղէն. Զի ըստ հրամանաց իմոց
գնասցեն, եւ զիրաւունս իմ պահեսցեն, եւ
արասցեն զնոսա. եւ եղիցին ինձ ի ժողո-
21 վուրդ, եւ ես եղէց նոցա յԱստուած։ [12]Եւ
ըստ զարշելեաց սրտից նոցա եւ ըստ անօ-
րէնութեանցն նոցա զոր արարին՝ եւ՝՝ ըստ
ճանապարհացն յոր գնային՝ հատուցից
ի գլուխս նոցա, ասէ Ադոնայի Տէր։
22 Եւ ամբարձին քերովբէքն զթեւս ի-
րեանց, եւ անիւքն զհետ նոցա, եւ
փառքն Աստուծոյ Իսրայէլի ի վերայ
23 [13]նոցա։ Եւ ամբարձան փառքն Տեառն
ի միջոյ քաղաքին, եւ կացին ի վերայ
լերինն որ էր [14]յանդիման քաղաքին։
24 Եւ վերացոյց զիս Ոգի, եւ ած յեր-
կիրն Քաղդէացւոց ի մէջ գերութեանն՝
տեսլեամբ Հոգւոյն Աստուծոյ. եւ [15]յա-
25 րեայ ի տեսլենէ անտի՝՝ զոր տեսի։ Եւ
խօսեցայ առ գերութեանն զամենայն
բանս Տեառն զոր եցոյց ինձ։

## ԳԼ. ԺԲ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, ի մէջ [16]անօրէնութեանց
նոցա՝՝ բնակեալ ես դու, որ աչս ունին
տեսանելոյ՝ եւ ոչ տեսանեն, եւ ականջս
լսելոյ՝ եւ ոչ լսեն. զի տուն դառնացո-
3 ղաց են։ Եւ դու, որդի մարդոյ, արա
դու քեզ [17]հանդերձ գերութեան, եւ վա-
րեաց ի գերութիւն [18]զաւուրս առաջի
նոցա, եւ գերեսջիր ի տեղւոջէ քումմէ
յայլ տեղի առաջի դոցա, [19]զի տեսցեն.
4 քանզի տուն դառնացողաց են։ Եւ [20]մեր-
կասցես զհանդերձս քո՝ իբրեւ զհան-
դերձ՝՝ գերութեան առաջի աչաց նոցա.

[1] Եբր. է մօտ. շինեցուք տունս. [2] Յեբր. պ—յ—ւէ
[3] Եբր. դնէիք [4] Եբր. սահմանացն [5] Եբր. յօրէնս իմ [6] Եբր. քո, եղբարք քո, արք մերձաւորք քո եւ ամենայն տունդ Իսրայէլի համօրէն

[7] Եբր. զձեզ [8] Եբր. ցրուեալ էք [9] Եբր. ձեզ
[10] Եբր. զպղծութիւնս [11] Եբր. մի, և ոգի նոր եդից ի ներքս ձեր [12] Եբր. Իսկ որոց սիրտք գնան ըստ գարշելեաց իւրեանց և ըստ պղծութեանց իւրեանց [13] Եբր. նոցա ի վերուստ [14] Եբր. յարեւելից [15] Եբր. վերացաւ յինէն տեսիլն [16] Եբր. տանն ապստամբաց [17] Եբր. կազմած [18] Եբր. ցերեկ [19] Եբր. թերեւս [20] Եբր. հանցես զկազմած քո ցցերեկ իբրեւ զկազմած

եւ դու եւցես ընդ երեսս առաջի նո-
5 ցա, որպէս եղանիցէ գերի։ Առաջի ա-
չաց նոցա ծակեա դու քեզ որմ, եւ ել-
6 ցես ընդ այն. Առաջի նոցա [1]կորակոր
գնասցես, դադտագողի ելանիցես". ծորձ
զգլխով պատիցես, եւ մի՛ տեսանիցես
զերկիրն. զի նշանակ ետու զքեզ տանն
Իսրայելի։
7 Եւ արարի այնպէս բստ ամենայնի
զոր պատուիրեաց ինձ Տէր, եւ [2]արկայ
հանդերձ գերութեան զաւուրս". եւ փո-
րեցի ընդ երեսս զորմն ձեռամբ իմով,
[3]եւ ելթայի զաղտագողի կորակոր ա-
8 ռաջի նոցա"։ Եւ եղեւ բան Տեառն ընդ
9 առաւօտն ի վերայ իմ եւ ասէ, Որդի
մարդոյ, ո՞չ ասացին ցքեզ տունդ Իս-
րայելի՝ տունն դառնացողաց, թէ Զի՞նչ
10 է զոր գործես։ Եւ արդ ասա ցնոսա,
Այսպէս ասէ Տէր [4]Տէր ցիշխանսդ եւ
ցառաջնորդս Երուսաղեմի" եւ ցամե-
նայն տունդ Իսրայելի որ են ի մէջ [5]դո-
11 ցա՝ թէ Ես նշանակ արարից ի միջի
զորա". որպէս արարից՝ այգպէս եղիցի
[6]զմա, զի ի պանդխտութիւն եւ ի գե-
12 րութիւն երթիցեն։ Եւ իշխանն ի մէջ
նոցա [7]կորակոր գնասցէ, պաղտագողի
չրջեսցի", զորմն հատեալ ելցէ, զերեսս
ծածկեալ գնասցէ, եւ մի՛ տեսցէ զեր-
13 կիրդ։ Եւ արկից զցանց իմ զնովաւ,
եւ պատեսցի ուռկանաւ [8]ի պաշարումն.
եւ ածից զնա ի Բաբելոն յերկիրդ Քաղ-
դէացւոց, եւ զզա մի՛ տեսցէ, եւ այդր
14 վախճանեսցի։ Եւ զամենայն օգնականս
նորա որ շուրջ զնովաւ իցեն եւ զա-
մենայն [9]պաշտպանս նորա ընդ ամենայն
հողմս ցրուեցից, եւ սուր զկնի նոցա
15 արձակեցից։ Եւ ծանիցեն թէ ես եմ
Տէր, ի ցրուելն իմ զնոսա ընդ ազգս,
16 եւ ցանել զնոսա ընդ գաւառս։ Եւ թո-
ղից ի նոցանէ արս թուով՝ ի սրոյ եւ
ի սովոյ եւ ի մահուանէ. զի պատմեսցեն
զամենայն անօրէնութիւնս նոցա ի մէջ
ազգացն յորս մտանիցեն անդր, եւ ծա-
նիցեն թէ ես եմ Տէր։
17 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
18 Որդի մարդոյ, զհաց քո [10]կարօտու-
թեամբ կերիջիր, եւ զջուր քո տանջա-
19 նօք եւ նեղութեամբ արբջիր. Եւ ասաս-
ցես ժողովուրդ երկրին, Այսպէս ասէ
Ադոնայի Տէր ցբնակիչս Երուսաղեմի
յերկրին Իսրայելի. Զհաց իւրեանց կա-
րօտութեամբ կերիցեն, եւ զջուր իւ-
րեանց [11]ապականութեամբ արբցեն. զի
ապականեսցի երկիր լրիւ իւրով, զի
յամպարշտութեան են ամենայն բնա-
20 կիչք նորա։ Եւ քաղաքք նոցա բնակեալք
աւերեսցին, եւ երկիր նոցա յապակա-
նութիւն եղիցի, եւ ծանիջիք թէ ես
եմ Տէր։
21 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
22 Որդի մարդոյ, զի՞նչ է ձեզ առակդ այդ
յերկրիդ Իսրայելացւոց զոր ասեն, Հե-
ռի են աւուրքն, եւ կորեան տեսիլք
23 ամենայն։ Վասն այդորիկ ասա ցնոսա,
Այսպէս ասէ Ադոնայի Տէր. Դարձու-
ցից զառակդ զայդ, եւ մի՛ եւս ասաս-
ցեն տունդ Իսրայելի զառակդ զայդ. զի
խօսեսցիս առ նոսա, թէ Հասեալ են
աւուրք եւ պատգամք ամենայն տեսլ-
24 եանց։ Զի ոչ եւս եղիցի ամենայն տե-
սիլ սուտ, եւ որ խօսիցի ըղձութեամբ
չնորհուկս ի մէջ որդւոցն Իսրայելի։
25 Քանզի ես Տէր խօսեցայ զբանս իմ, խօ-
սեցայ եւ արարից, եւ ոչ եւս [12]յերկա-
րեցից. զի յաւուրս ձեր, տունդ դառնա-
ցողաց, խօսեցայ զբանն, եւ արարից
ասէ Ադոնայի Տէր։
26 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
27 Որդի մարդոյ, ահաւադիկ տունդ Իս-
րայելի՝ [13]տունն դառնացողաց" ասեն, Տե-
սիլդ զոր տեսանէ դա՝ յաւուրս բազումս,
եւ ի ժամանակս հեռաւորս լինելոց է
28 այդ զոր դայդ մարգարէանայ։ Վասն
այդորիկ ասա ցնոսա, Այսպէս ասէ Ա-
դոնայի Տէր. Ոչ եւս յերկարեսցին ա-
մենայն բանք իմ զոր խօսեցայց, այլ զոր
խօսեցայց՝ արարից, ասէ Ադոնայի Տէր։

## ԳԼ. ԺԳ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, մարգարէաց ի վերայ մար-
գարէիցդ Իսրայելի որ մարգարէանան
անդ, եւ ասասցես ցմարգարէսդ որ մար-
գարէանան ի սրտից իւրեանց. [13]մար-
գարէանայցես եւ ասասցես ցնոսա."

---

[1] Եբր. բարձցես յուս, ի խաւարի հանցես [2] Եբր. զկազմած իմ հանի իբրեւ զկազմած գերու-
թեան զցերեկ [3] Եբր. ի խաւարի հանի, բարձի
յուս առաջի աչաց նոցա [4] Եբր. Եհովայ.
պատգամս այս առ իշխանն որ յԵրուսաղէմ
[5] Եբր. դոցա։ (11) Ասա, Ես նշանակ եմ ի միջի
ձերում [6] Եբր. նոցա [7] Եբր. կրեսցէ բեռն յուս
ի խաւարի [8] Եբր. իմով [9] Եբր. գունդս զօրաց

[10] Եբր. դողութեամբ [11] Եբր. զարմացմամբ
[12] Եբր. յերկարեսցի [13] Ցեբր. պ–լ–ե

3 Լուարուք զպատգամս Տեառն ։ Այսպէս
ասէ Ադոնայի Տէր ․ Վա՜յ [1]դոցա որ մար-
գարէանային ի սրտից իւրեանց", որ եր-
թան զհետ ոգւոց իւրեանց , եւ ամե-
4 նեւին ոչ տեսանեն ։ Իբրեւ աղուեսք
յաւերակս էին մարգարէքն քո , Իսրայէլ ․
5 [2]Եւ ոչ կացին ի հաստատութեան , եւ
ժողովեցին հօտս ի վերայ տանն Իսրա-
յելի ․ եւ ոչ հաստատեցան ոյք խօսէին
6 յանուն Տեառն ։ Որ տեսանէին" զսնո-
թիւն , եւ պատմէին զբղձութիւն սնո-
տի ․ որք ասէին , Այսպէս ասէ Տէր ․ եւ
ես Տէր ոչ առաքեցի զնոսա ․ եւ [3]սկսան
7 յարուցանել բանս"։ Ո՞չ ապաքէն տե-
սիլս սուտս տեսէք , եւ բղձութիւնս
սնոտիս պատմէիք , եւ ասէիք , Այսպէս
8 ասէ Տէր ․ եւ ես Տէր ոչ խօսեցայ ։ Վասն
այդորիկ [4]ասա , Այսպէս ասէ Ադոնայի
Տէր ․ Փոխանակ զի բանք ձեր սուտ են ,
եւ բղձութիւնք ձեր սնոտիք , վասն այ-
նորիկ ես ի վերայ ձեր , ասէ Ադոնայի
9 Տէր ․ Եւ ձգեցից զձեռն իմ ի վերայ մար-
գարէիցն որ տեսանէին սուտս եւ
խօսէին սնոտիս ․ ի խորհուրդս ժողովրդեան
իմոյ մի՛ կացցեն , եւ մի՛ ի գիրս տանն
Իսրայելի գրեսցին , եւ յերկիրն Իսրա-
յելի մի՛ մտցեն ․ եւ ծանիցեն թէ ես եմ
10 Ադոնայի Տէր ։ Փոխանակ զի մոլորե-
ցուցանէին զժողովուրդ իմ , եւ ասէին ,
Խաղաղութիւն , խաղաղութիւն ․ եւ ոչ
գոյր խաղաղութիւն ․ եւ ինքն շինէր
11 որմ , եւ նոքա [5]ծեփէին , զի փլցի". Ա-
սա ցնոսա որ [6]ծեփէինն , թէ Անզգա-
մութիւն է այդ , քանզի փլանելոց է ․
եկեսցէ անձրեւ եւ ողողեսցէ , եւ տաց
քարինս ամրաքարաց ի պահանգս նոցա ,
եւ կործանեսցին ․ հողմ յարիցէ , եւ
12 տապալեսցէ"։ Եւ ահա կործանեցաւ որմն ․
եւ ո՞չ [4]ասասցեն ցձեզ , թէ Ո՞ւր է
13 ծեփն ձեր զոր ծեփեցէքն ։ Զի այսպէս
ասէ Ադոնայի Տէր ․ Արձակեցից [7]հողմս
որ բառնայցէ" սրտմտութեամբ իմով ,
եւ եկեսցէ անձրեւ ողողանել բարկու-
թեամբ իմով , եւ [8]զվէմս ամրաքարացն
ածից ցասմամբ ի վերայ նորա ի վախ-
14 ճան"։ Եւ յատակեցից զորմն զոր ծե-
փէիք , եւ կործանեսցի ․ եւ ընկեցից զնա
յերկիր , եւ յայտնեսցին հիմունք նորա ,
եւ անկցի եւ [9]վախճանեսցի յանգիմա-
նութեամբ". եւ գիտասջիք թէ ես եմ
15 Տէր ։ Եւ կատարեցից զսրտմտութիւն
իմ ի վերայ որմոյն , եւ ի վերայ ծեփո-
ղաց նորա , [4]եւ կործանեսցի". եւ աս-
ցից ցձեզ՝ թէ Չիք ուրեք որմ , եւ ոչ
16 ծեփօղք նորա , Մարգարէքն Իսրայելի՝
որ մարգարէանային ի վերայ Երուսա-
ղեմի , եւ տեսանէին նմա խաղաղու-
թիւն , եւ ոչ գոյր խաղաղութիւն , ա-
սէ Ադոնայի Տէր ։
17 Եւ դու , որդի մարդոյ , հաստատեա
զերեսս քո ի վերայ դստերաց ժողովրդ-
եան քո , որ մարգարէանային ի սրտից
իւրեանց ․ մարգարեաց ի վերայ նոցա ,
18 Եւ ասասցես , Այսպէս ասէ Ադոնայի
Տէր ․ Վա՜յ այնոցիկ որ կարեն կարկա-
տեն զբարձկնկարդ ի ներքոյ ամենայն
արմկան ձեռին , եւ առնեն գլխագիրս
գլխոյ ամենայն հասակաց՝ [10]թիւրել զան-
ձինս ․ զի թիւրեցան անձինք ժողովրդ-
եան իմոյ , եւ ապչեցուցանէին զան-
19 ձինս ․ Եւ բամբասէին զիս" առաջի ժո-
ղովրդեան իմոյ վասն ափոյ միոյ գար-
ւոյ եւ կտորոյ միոյ հացի , սպանանել
զանձինս որ ոչ էին մահապարտք , եւ
ապրեցուցանել զանձինս որոց ոչ էր
պարտ կեալ , ի բարբառելն ձեր յականջս
ժողովրդեանն , որ ախորժէ զբարբառ
20 նանրութեան ։ Վասն այսորիկ այսպէս
ասէ Տէր Տէր ․ Ահաւասիկ ես ի վերայ
բարձկներոյդ ձերոյ , [11]յոր դուք ժողո-
վէիք զանձինս , եւ պատառեցից զայդ"
ի բազկաց ձերոց ․ եւ առաքեցից զան-
ձինս զոր դուքն [12]թիւրէիք ի ցրումն"։
21 Եւ պատառեցից զգլխագիրսն ձեր , եւ
ապրեցուցից զժողովուրդ իմ ի ձե-
ռաց ձերոց , եւ ոչ եւս եղիցին ի ձեռս
ձեր [13]ի ժողովս ․ եւ ծանիջիք զի ես եմ
22 Տէր ։ Փոխանակ զի [14]խոտորէիք զսիրտ
արդարոյն անիրաւութեամբ", եւ իմ ոչ

[1] Եբր․ մարգարէիցդ անզգամաց [2] Եբր․ Ոչ ելէք ի խրամատս, և ոչ ածէք ցանկ զտամբն Իսրայելի, կալ ի մարտի յաւուրն Տեառն ։ (6) Տեսանէին, [3] Եբր․ յուսացուցանեն ի հաստատութիւն բանիցն [4] Յեբր․ պակաս [5] Եբր․ ծեփէին զայն բռով [6] Եբր ծեփէինն բռով թէ Փլանելոց է․ եկեսցէ անձրեւ որ ողողէ, և դուք , քարինք կարկտայ, անկջիք․ և տապալեսցէ ջու հողմ մրրկի [7] Եբր․ հողմն մրրկի [8] Եբր․ վէմ կարկտոյ ցասմամբ ի սպառումն

[9] Եբր․ սպառեսջիք ի միջի նորա [10] Եբր․ որսալ անձինս ․ միթէ որսացարո՞ւք զանձինս ժողովրդեան իմոյ , և ապրեցուցէ՞ք զանձինս ձեր ։ (19) Եւ անարգեցէք զիս [11] Եբր․ որովք որսայիք անդ անձինս ի թռիչս․ և պատառեցից զնոսա [12] Եբր․ որսայիք ի թռիչս [13] Եբր․ յորս [14] Եբր․ տխրեցուցանէիք զսիրտ արդարոյն ստութեամբ

էր [1]թիւրեալ զնա. եւ զօրացուցանէիք
զձեռս անօրինին՝ չդառնալ [2]ամենեւին ի՛ն
յանօրէնութենէ իւրմէ, եւ՞ ի ճանա-
23 պարհաց իւրոց չարաց եւ կեալ։ Վասն
այնորիկ զսուտութիւնսն մի՛ եւս տեսա-
նիցէք, եւ բղձութիւնս այլ մի՛ եւս բղ-
ձանիցէք. եւ ապրեցուցից զժողովուրդ
իմ ի ձեռաց ձերոց. եւ ծանիջիք թէ
ես եմ Տէր։

## ԳԼ. ԺԴ

1 Եւ եկին առ իս արք ի ծերոցն Իսրա-
2 յէլի, եւ նստան առաջի իմ։ Եւ եղեւ
3 բան Տեառն առ իս եւ ասէ, Որդի մար-
դոյ, արքդ այդոքիկ [3]եդին զխորհուրդս՞
իւրեանց ի սիրտս իւրեանց, եւ [4]զտան-
ջանս անիրաւութեանց իւրեանց եդին
առաջի երեսաց իւրեանց. թէ իցէ՞ տա-
4 լով տաց զոցա պատասխանի։ Վասն
այնորիկ խօսեաց ընդ դոսա եւ ասաս-
ցես, Այսպէս ասէ Ադոնայի Տէր. Այր
ոք այր ի տանէդ Իսրայէլի, որ դիցէ
[5]զխորհուրդս իւր ի սրտի իւրում, եւ
[4]զտանջանս անիրաւութեան իւրոյ կար-
գեսցէ առաջի աչաց իւրոց, եւ եկեսցէ
առ մարգարէ՝ [2]հարցանել նմաւ յինէն,՞
ես Տէր պատասխանի տաց նմա ըստ
5 [6]այնմ զոր ի մտի ունիցի. Զի մի՛ խո-
տորեցուսցեն զտունն Իսրայէլի ըստ օ-
տարացելոց սրտից իւրեանց յինէն ի
գնացս իւրեանց՞։
6 Վասն այնորիկ ասա տանդ Իսրայէլի,
Այսպէս ասէ Տէր Տէր [2]Աստուած.
Դարձայք եւ դարձարու՛ք [7]ի գնացից
ձերոց, եւ յամենայն ամպարշտութեանց
ձերոց, եւ դարձուցէք զերեսս ձեր [2]առ
7 իս՞։ Քանզի այր ոք այր ի տանէդ Իս-
րայէլի եւ յեկաց [8]եւ պանդխտացն Իս-
րայէլի՞ որ օտարասցի յինէն եւ դիցէ
[5]զխորհուրդս իւր ի սրտի իւրում, եւ
[4]զտանջանս անիրաւութեան իւրոյ կար-
գեսցէ առաջի երեսաց իւրոց, եւ եկես-
ցէ առ մարգարէ հարցանել նմաւ զիս,
ես Տէր պատասխանի տաց նմա [9]ըստ
8 այնմ զոր ի մտին ունիցի՞. Եւ հաստա-
տեցից զերեսս իմ ի վերայ մարդոյն այ-
նորիկ. եդից զնա ի նշան եւ [10]յառակա-
նութիւն, եւ բարձից զնա ի միջոյ ժո-
ղովրդեան իմոյ, եւ ծանիջիք զի ես եմ
Տէր։
9 Եւ մարգարէ ոք թէ [11]խաբեսցի եւ
խօսեսցի բան ինչ, ես Տէր մոլորեցուցի
զմարգարէն զայն. եւ ձգեցից զձեռն իմ
ի վերայ նորա, եւ սատակեցից զնա ի
10 միջոյ ժողովրդեան իմոյ Իսրայէլի։ Եւ
ընկալցին զանիրաւութիւն իւրեանց ըստ
անիրաւութեան հարցողին, նոյնպէս եւ
11 անիրաւութիւն մարգարէին եղիցի. Զի
մի՛ եւս մոլորեսցի տունն Իսրայէլի յի-
նէն, եւ զի մի՛ եւս պղծեսցին յամե-
նայն յանցանս իւրեանց. եւ եղիցին ինձ
ի ժողովուրդ, եւ ես եղէց նոցա յԱս-
տուած, ասէ Ադոնայի Տէր։
12 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
13 Որդի մարդոյ, երկիր մի որ յանցանիցէ
ինչ ինձ յանցանս, եւ ձգեցից զձեռն
իմ ի վերայ նորա, եւ խորտակեցից
զհաստատութիւն հացի նորա, եւ առ-
ձակեցից ի վերայ նորա սով, եւ բար-
ձից ի նմանէ զմարդ եւ զանասուն՝
14 Եւ եթէ իցեն արքն այն երեքին ի միջի
նորա, Նոյ եւ Յոբ եւ Դանիէլ, նո-
քա արդարութեամբն իւրեանց [12]ապ-
րեսցին, ասէ Ադոնայի Տէր։
15 Եւ եթէ գազանս չարս ածից ի վե-
րայ երկրին եւ [13]պատժեցից զնա, եւ
եղիցի յապականութիւն, մինչեւ անց
ոչ լինիցի ընդ նա յերեսաց գազանաց,
16 [14]Եւ այն արք՞ ի միջի նորա իցեն, կեն-
դանի եմ ես, ասէ Ադոնայի Տէր, եթէ
իցէ ուստերք նոցա եւ դստերք ապրես-
ցին. այլ [15]ինքեանք ապրեսցին, եւ եր-
կիրն եղիցի ի սատակումն։
17 Եւ եթէ սուր ածից յերկիրն յայն,
եւ ասացից սրոյն անցանել ընդ երկիրն,
եւ բարձից ի նմանէ զմարդ եւ զանա-
18 սուն, Եւ արքն այն երեքեան ի միջի
նորա իցեն, կենդանի եմ ես, ասէ
Ադոնայի Տէր, ոչ ապրեցուսցեն զուս-
տերս եւ զդստերս, բայց եթէ ինքեանք
միայն ապրեսցին։
19 Եւ եթէ մահ առաքեցից յերկիրն
յայն, եւ հեղից զբարկութիւն իմ ի

---

[1] Եբր. տխրեցուցեալ [2] Եբր. [illegible] [3] Եբր. կանգնեցին զկուռս [4] Եբր. զգայթակղութիւն [5] Եբր. զկուռս [6] Եբր. բազմութեան կռոց նորա. (5) Զի կալայց զտունն Իսրայէլի ի սրտի իւրում, այնու զի օտարացան յինէն կռովք իւրեանց համօրէն [7] Եբր. ի կռոց [8] Եբր. ի պանդխտելոց յԻսրայէլի [9] Եբր. ինձէն

[10] Եբր. յառակ [11] Եբր. մոլորեսցի [12] Եբր. ապրեցուսցեն զանձինս իւրեանց [13] Եբր. անզաւակեսցեն [14] Եբր. Երեքին արքն այնոքիկ [15] Եբր. ինքեանք միայն

վերայ նորա արեամբ՝ սատակել ի նմանէ
20 զմարդ եւ զանասուն, Եւ Նոյ եւ Դա-
նիէլ եւ Յոբ ի մէջ նորա իցեն, կեն-
դանի եմ ես, ասէ Ադոնայի Տէր, եթէ
իցէ ուստերք եւ դստերք նոցա մնաս-
ցեն. այլ նոքա արդարութեամբ իւ-
րեանց զանձինս իւրեանց ապրեցուսցեն։
21 Այսպէս ասէ Ադոնայի Տէր. Եւ եթէ
զչորեսին իսկ զանհնարին *վրէժս ար-
ձակեցից, զսուր եւ զսով եւ զգազանս
չարս եւ զմահ ի վերայ Երուսաղեմի՝
սատակել ի նմանէ զմարդ եւ զանասուն,
22 [1]Մնացորդքն ապրեալքն ի նմա հանցեն
զուստերս եւ զդստերս իւրեանց. ահաւա-
սիկ ընդ նոսա" ելցեն առ ձեզ, եւ տեսջիք
զճանապարհս նոցա եւ [2]զխորհուրդս նոցա,
եւ զղջանայցէք" ի վերայ չարեացն զոր
ածի ի վերայ Երուսաղեմի, զամենայն զչա-
23 րիսն զոր ածի ի վերայ նորա։ Եւ մխի-
թարեսցեն զձեզ, զի տեսանիցէք զճա-
նապարհս նոցա եւ [3]զխորհուրդս նոցա,
եւ ի միտ առնուցուք եթէ ոչ տարա-
պարտուց արարի զամենայն զոր ինչ
արարի [4]ընդ նոսա", ասէ Ադոնայի Տէր։

## ԳԼ. ԺԵ

[5]Վասն փայտի որթուն։"

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, զի՞նչ լինիցի փայտ որ-
թուն յամենայն [6]փայտից ստոց որ են"
3 ի փայտս անտառի։ Միթէ առնուցո՞ւն
ի նմանէ փայտ մի՝ առնել գործի ինչ,
կամ առնուցո՞ւն ի նմանէ ցից մի կա-
4 խել զնմանէ անօթ ինչ։ Բայց զի ի հրոյ
ծախս տուեալ է. զի [7]ամ ի յամէ զյօտ"
նորա ծախէ հուր, եւ [8]պակասէ ի սպառ".
միթէ պիտանացո՞ւ ինչ իցէ ի գործ.
5 [9]Թէպէտ եւ նոյնպէս ողջոյն հատանիցի",
չէ ինչ պիտոյ ի գործ. [10]բայց թէ հրոյ
ճարակ լինիցի ի սպառ, եւ ոչ ինչ ա-
6 մենեւին" պիտանացու ի գործ։ Վասն
այնորիկ, այսպէս ասէ Ադոնայի Տէր.
Որպէս զփայտ որթուն ի փայտս
անտառի ետու ճարակ հրոյ, այնպէս

*Ոմանք. վրէժս իմ [1]Ոմանք. Եւ ահա կացցեն ի նմա ապրեալք որ ելանեն, ուստերք և դստերք. ահա նոքա [2]Ոմանք. զգործս նոցա, եւ մխիթարեսջիք [3]Ոմանք. զգործս [4]Ոմանք. ի նմա [5]Յոմանք. [illegible] [6]Ոմանք. փայտից. ուռ է [7]Ոմանք. զերկոսին ծայրս [8]Ոմանք. մէջ նորա սպառի [9]Ոմանք. Ի լինել իսկ նորա ողջ [10]Ոմանք. միթէ յորժամ հրոյ ճարակ լինիցի եւ այրեսցի, իցէ՞ տակաւին

7 տաց զբնակիչսդ Երուսաղեմի։ Եւ հաս-
տատեցից զերեսս իմ ի վերայ նոցա, ի
հրոյ ելցեն, եւ հուր կերիցէ զնոսա. եւ
ծանիցեն թէ ես եմ Տէր՝ ի հաստատել
8 ինձ զերեսս իմ ի վերայ նոցա։ Եւ տաց
զերկիրն յապականութիւն, փոխանակ
զի անկան ընդ յանցանօք, ասէ Ադո-
նայի Տէր։

## ԳԼ. ԺԶ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, զիր վկայութիւն Երու-
3 սաղեմի զանօրէնութեանց նորա. Եւ
ասասցես, Այսպէս ասէ Ադոնայի Տէր
ցԵրուսաղէմ. Արմատ քո եւ ծնունդ
քո յերկրէն Քանանացւոց, եւ հայր քո
4 Ամովրհացի եւ մայր քո Քետացի։ Եւ
ծնունդն քո՝ յորում աւուր ծնար, ոչ
ոք եհատ զպորտ քո, [5]եւ ոչ պնդեցին
զստինս քո։" եւ ջրով ոչ լուացար ի
[11]փրկութիւն, եւ աղիւ ոչ յաղեցար, եւ
5 ի խանձարուրս ոչ պատեցար։ Եւ ոչ
խնայեաց ի քեզ [12]ակն իմ, եւ ոչ արարի
քեզ ինչ մի յայսմ ամենայնէ զգուշա-
նալ, թէ գուցէ անցանիցէ ինչ ընդ քեզ.
եւ" ընկեցեալ զնէիր ընդ երեսս դաշ-
տին [13]վասն խոտորնակ մտաց քոց" յա-
6 ւուրն յորում ծնար։ Անցի առ քեւ, եւ
տեսի տրեամբ թաթաւեալ, եւ ասացի
[14]ցքեզ, Կենդանասջիր յարենէ քումմէ,
7 եւ կեանք քո յարենէ. Բազմասջիր,
քանզի իբրեւ զբոյս ագարակի ետու"
զքեզ. եւ բազմացար եւ մեծացար,
եւ եկիր մտեր դու [15]ի քաղաքս քա-
ղաքաց". ստինք անկան քո, եւ մազք
արձակեցան, եւ դու էիր մերկ, խայ-
տառակ։
8 Եւ եկի հասի ի վերայ քո, եւ տեսի
զքեզ, զի հասեալ էր ժամանակ քո, [16]եւ
ժամանակ խախտողաց քոց". տարածեցի
զթեւս իմ ի վերայ քո, եւ ծածկեցի
զխայտառակութիւն քո. եւ երդուայ
քեզ երդումն, եւ յուխտ մտի ընդ քեզ,
ասէ Ադոնայի Տէր, եւ եղեր ինձ։
9 Եւ լուացի զքեզ ջրով, եւ սրբեցի զքեզ
յարենէ քումմէ, եւ օծի զքեզ իւղով.

[11]Ոմանք. սրբութիւն [12]Ոմանք. ակն՝ առնել քեզ ինչ մի յայսցանէ արգահատել քեզ, եւ դու [13]Ոմանք. գարշութեամբ անձին քո [14]Ոմանք. ցքեզ յարեան քում, Կեաց. ասացի ըստ յարեան քում, Կեաց. (7) Բիւրաւոր իբրեւ զբոյս ագարակի արարի [15]Ոմանք. ի յարդ եւ ի զարդ [16]Ոմանք. ժամանակ սիրոյ

10 Եւ զգեցուցի զքեզ պէսպէսս, եւ ա-
գուցի քեզ [1]զկրկնագոյնն, եւ ածի ընդ
մէջ քո բեհեզ, եւ արկի զքեւ մնջուս.
11 Եւ զարդարեցի զքեզ զարդու, եւ եդի
ապարանջանս ի ձեռս քո, եւ քասա-
12 մանեակ ի պարանոց քո. Եդի [2]քեզ
գինդս", եւ զօրչապահանգս յականջս
քո, եւ պսակ պարծանաց ի գլուխ քո։
13 Եւ զարդարեցար ի զարդ ոսկւոյ եւ
արծաթոյ, եւ հանդերձ քո բեհեզ եւ
զառնաւուխտ եւ ճաճանչաւուխտ. եւ
կերարնաչին եւ եւղ եւ մեղր, եւ եղեր
գեղեցիկ յոյժ յոյժ, եւ [3]գրգեցար ի
14 գրգանս թագաւորութեան"։ Եւ ել ա-
նուն գեղեցկութեան քո ընդ [4]ամենայն
ազգս, զի էր կատարեալ վայելչութիւն
գեղոյ քո զոր յօրինեցի ի վերայ քո,
ասէ Ադոնայի Տէր։
15 Եւ դու վստահ եղեր ի գեղ քո,
եւ պոռնկեցար [5]ի համանուն քո. եւ
տարածեցեր զպոռնկութիւն քո առ ա-
մենայն [6]անցաւորս, որոց ոչ լինէր այն-
16 պիսի ինչ"։ Եւ առեր ի հանդերձից
քոց եւ արարեր քեզ [7]կուռս կարկա-
տունս", եւ պոռնկեցար ընդ նոսա. [8]եւ
մի՛ մտցես անդր, զի ոչ էին եւ ոչ լի-
17 ցին"։ Եւ առեր զսպաս պարծանացն
քոց յոսկւոյն իմոյ եւ յարծաթոյն զոր
ետու քեզ, եւ արարեր քեզ պատկերս
արուականս. եւ պոռնկեցար ընդ նոսա։
18 Եւ առեր զհանդերձն [9]գեղեցիկ քո" եւ
արկեր զնոքօք, եւ զեւղն իմ եւ
զխունկսն եդիր առաջի երեսաց նոցա.
19 Եւ զհացն իմ զոր ետու քեզ՝ եւ զնա-
շիհն եւ զեւղ եւ զմեղր զոր ջամբեցի
քեզ՝ եդիր առաջի երեսաց նոցա ի հոտ
անուշից. եւ եղեւ [4]յետ այնորիկ", ասէ
20 Ադոնայի Տէր, Եւ առեր զուստերսն
քո եւ զդստերս զոր ինձ ծնար՝ եւ զո-
հեցեր նոցա [10]ի սատակումն։ Իբրեւ
զփո՞քր ինչ համարեցար [11]զպոռնկու-
21 թիւնն, Եւ զեներ զորդիսն իմ, եւ
22 [12]արարեր զնոսա նոցա ընծայս։ Եւ այն
անհնարին եղեւ քան զամենայն պոռնը-
կութիւնս եւ պղծութիւնս քո. եւ" ոչ
յիշեցեր զաւուրս աղայութեան քո, ի
ժամանակի յորում էիր մերկ եւ խայ-
տառակեալ եւ թաթաւեալ յարեան
23 քում, [4]ուստի կենդանացարն։" Եւ եղեւ
յետ ամենայն չարեացն քոց (վա՜յ, վա՜յ
24 քեզ, ասէ Ադոնայի Տէր), Շինեցեր
դու քեզ տուն պոռնկութեան, եւ ա-
րարեր քեզ բագինս յամենայն հրապա-
25 րակս քո։ Եւ ի գլուխս ամենայն ճա-
նապարհաց քոց շինեցեր [13]զպոռնկոցս
քո, եւ ապականեցեր զգեղ երեսաց
քոց, եւ լայնեցար ամենայն անցաւորաց
ճանապարհի եւ յաճախեցեր զպոռնկու-
26 թիւնս քո։ Եւ պոռնկեցար ընդ որդիսն
Եգիպտացւոց՝ սահմանակիցս քո ընդ մե-
ծամարմինս, եւ բազմապատիկ պոռնկեցար,
27 զի զիս բարկացուսցես։ Արդ ես ձգեցից
զձեռն իմ ի վերայ քո եւ բարձից [14]զկրա-
կուրս քո, եւ մատնեցից զքեզ ի ձեռս
ատելեաց քոց՝ զդստերացն այլազգեացն, որք
[15]թիւրէին զքեզ ի ճանապարհէ քումմէ"։
28 [4]Ամպարշտեցար եւ" պոռնկեցար ընդ
որդիսն Ասորեստանեայց, [16]սակայն եւ
այնպէս ոչ յագեցար. յաճախեցեր ի
պոռնկութիւնս քո", սակայն եւ այն-
29 պէս ոչ յագեցար։ [17]Յաճախեցեր զաշխարս
ընդ երկիրն Քանանու եւ Քաղդէացւոց",
30 համայն եւ այնպէս ոչ յագեցար։ [18]Զի՞նչ
արարից ընդ դստերս քո", ասէ Ադո-
նայի Տէր, յետ գործելոյ քո զայդ ամե-
նայն գործս կնոջ [19]պոռնկի. զի պոռնկե-
ցար բազմապատիկ ընդ դստերսն քո"։
31 Եւ շինեցեր զպոռնկոցս ի գլուխս ամե-
նայն ճանապարհաց, եւ կոթողս կոթո-
ղէիր յամենայն հրապարակս. եւ ոչ
եղեր իբրեւ զկին մի [20]պոռնիկ որ ժո-
32 ղովէ զկապէնս. Զի ամենայն կին պոռ-
նիկ նմանող քո, որ շնայցէ ընդ արամբ
իւրով, ոչ առնու գանձս յառնէ իւրմէ՝
33 եւ տայ վարձս համանեաց իւրոց։ Ամե-
նայն պոռնիկք կապէնս առնուն ան-
ձանց իւրեանց", եւ դու տայիր վարձս

[1]Եբր. կօշիկս ի թեհաշէ [2]Եբր. գինդս ի քիթ քո [3]Եբր. հասեր ի թագաւորութիւն [4]Յեբր. պակասէ [5]Եբր. վասն համբաւոյ [6]Եբր. ան ցորդ. Նորա լինէր [7]Եբր. բարձաւնս երփն երփն [8]Եբր. ոչ եղեւ եւ ոչ լիցի այսպէս [9]Եբր. նկարակերտ [10]Եբր. ի կերակուր [11]Եբր. զպոռնկութիւնս քո [12]Եբր. ետուր զնոսա եւ անցուցեր զնոսա ընդ հուր վասն նոցա ։ (22) Եւ յամենայն պղծութիւնս և ի պոռնկութիւնս քո

[13]Եբր. զբարձրաւանդակ [14]Իմա զկերակուր, կամ, զաոճիկ [15]Եբր. ամաչեն ի ճանապարհէ քումմէ լկտւոյ [16]Եբր. զի չէր քո յագեալ, եւ պոռնկեցար ընդ նոսա [17]Եբր. Եւ յաճախեցեր զպոռնկութիւն քո յերկրէն Քանանու ի Քաղդէացիս [18]Եբր Զի՛նչ տկարացեալ է սիրտ քո [19]Եբր. պոռնկի լկտեւոյ [20]Եբր. պոռնիկ՝ անարգեալ զկապէնս ։ (32) Կին շնացող, որ փոխանակ առն իւրոյ ընդունի զօտարս ։ (33) Ամենայն պոռնկաց տան կապէնս

[1]սեղխաց քոց, եւ ուղերձէիր զնոսա
ցալ առ քեզ յամենայն կողմանց ի
34 պոռնկութիւնս քո։ Եւ եղեւ քեզ խո-
տորնակի քան զամենայն կանանց ի
պոռնկութեան քում, [2]եւ յետ քո ոչ
պոռնկեցան. զի նոքա կապէնս առնուն
յարանց, եւ դու տայիր վարձս սեղխաց,
եւ" եղեւ քեզ այն ի խոտորնակի։
35 Վասն այդորիկ, պոռնիկ, լուր զպատ-
36 գամս Տեառն. Այսպէս ասէ Ադոնայի
Տէր. Փոխանակ զի հեղեր արկեր զպղինձ
քո, եւ [3]յայտնեսցի ամօթ պոռնկու-
թեան քո առաջի հոմանեաց քոց, եւ
յամենայն [4]խորհուրդս անօրէնութեանց"
քոց, եւ յարիւնս որդւոց քոց զորս
37 տայիր նոցա, Վասն այնորիկ ահաւա-
սիկ ես ժողովեցից [5]ի վերայ քո" զամե-
նայն հոմանիս քո, ընդ որս դու խառ-
նակէիր, եւ [5]յարուցից ի վերայ քո"
զամենայն սիրելիս եւ զատելիս քո, եւ
ժողովեցից պատեցից զնոսա շուրջ զքեւ,
եւ յայտնեցից [6]զչարիս քո առաջի նո-
ցա, եւ տեսցեն զամենայն խայտառա-
38 կութիւնս քո։ Եւ խնդրեցից ի քէն
զվրէժ շնացելոյ եւ արիւնահեղի, [5]եւ
եդից զքեզ յարեան քո," եւ եդից զքեզ
յարիւն սրտմտութեան եւ նախանձու։
39 Եւ մատնեցից զքեզ ի ձեռս նոցա, եւ
կործանեսցեն զպոռնկոցս քո, եւ քա-
կեսցեն զկրթոցս քո, եւ մերկասցեն ի
քէն զհանդերձս քո, եւ առցեն զզարդս
պարծանաց քոց, եւ թողցեն զքեզ մերկ
40 խայտառակեալ. Եւ ածցեն ի վերայ քո
ամբոխ, եւ քարկոծեսցեն զքեզ վիմօք,
եւ կոտորեսցեն զքեզ սրով իւրեանց.
41 Եւ այրեսցեն զտունս քո հրով, եւ ա-
րասցեն ի քեզ վրէժխնդրութիւն առաջի
կանանց բազմաց. եւ դարձուցից զքեզ
ի պոռնկութենէ քումմէ, եւ վարձս ոչ
42 եւս տացես նոցա։ Եւ [7]արձակեցից
զսրտմտութիւն իմ ի վերայ քո, եւ
բարձցի նախանձն իմ ի քէն. եւ հանգ-
43 եայց, եւ ոչ եւս [8]հոգացայց։ Փոխանակ
զի ոչ յիշեցեր զօր մանկութեան քո.
եւ տրտմեցուցանէիր զիս ի վերայ ա-
մենայնի այդորիկ, եւ ես ահաւասիկ
ըստ ճանապարհացն քոց ետու ի գլուխ
քո, ասէ Ադոնայի Տէր. եւ [9]այնպէս
արարեր" ամպարշտութիւնս ի վերայ
ամենայն անօրէնութեանց քոց։
44 Այս ամենայն է զոր մրմնջէին զքէն
առակօք եւ ասէին, Եթէ Որպէս մայրն՝
45 նոյնպէս եւ դուստրն։ Արդ դուստր
մօրն դու ես, որ մերժեաց զայր իւր եւ
զորդիս իւր, եւ քոյր քերցն քոց որք
մերժեցին զայրս իւրեանց եւ զորդիս
իւրեանց. մայր ձեր Քետացի, եւ հայր
46 ձեր Ամովրհացի. Եւ քոյր [10]ձեր երէց՝
Շամրին, ինքն եւ դստերք իւր որ բնակ-
եալ է ի ձախմէ քումմէ. եւ քոյր քո
կրտսեր՝ որ բնակեալ է ընդ աջմէ քումմէ՝
47 Սոդոմ եւ դստերք իւր։ Սակայն եւ ոչ
ըստ ճանապարհաց նոցա գնացեր, եւ
ոչ ըստ անօրէնութեանց նոցա արարեր.
[11]զի փոքր մի" առաւել գտար քան զնոսա
48 յամենայն ճանապարհս քո։ Կենդանի
եմ ես, ասէ Ադոնայի Տէր, եթէ ա-
րար [5]ինչ աւելի" Սոդոմ քոյրն քո՝ ինքն
եւ դստերք իւր, [12]քան զոր" արարեր
49 դու եւ դստերք քո։ Բայց այս էր ա-
նօրէնութիւն Սոդոմայ քեռ քո. ամ-
բարտաւանութիւն, [13]ի լիութեան հացի
եւ յղփութեան գինւոյ՝ փափկանայր
ինքն եւ դստերք իւր. այնու առաւել
էր ինքն եւ դստերք իւր", եւ ձեռն
յաղքատն եւ ի տնանկն ոչ կարկառէին։
50 Մեծամտէին եւ գործէին զանօրէնու-
թիւն առաջի իմ. իբրեւ զայն տեսի՝
51 բարձի զնոսա։ Նա եւ Շամրին զկէս
յանցանաց քոց ոչ յանցեաւ. եւ յաճա-
խեցեր զանօրէնութիւնս քո առաւել
քան զնոսա, եւ արդարացուցեր զքորս
քո յամենայն անօրէնութիւնս քո զոր
52 արարեր։ Եւ արդ ընկալ [14]զատանջանս քո
որ ապականեցեր զքորսն քո՝ անօրէ-
նութեամբքն զոր անօրինեցար առաւել
քան զնոսա, եւ արդարացուցեր զնոսա
յոյժ" քան զքեզ. եւ արդ յամօթ լեր
եւ կրեա զանարգանս ի յարդարացու-
53 ցանել զքորսն [15]քո քան զքեզ։ Եւ
դարձուցից զդարձուածս նոցա, զդար-
ձուածս" Սոդոմայ եւ զդստերաց իւրոց,

[1]Եբր. ամենայն սեղխաց [2]Եբր. զի զկնի քո ոչ ոք եկն ի պոռնկել. եւ ի տալ քո վարձս, մինչ ոչ տուեալ լինէին քեզ վարձք. [3]Եբր. յայտնեցաւ [4]Եբր. կուռս պղծութեանց [5]Եբր. պակասէ [6]Եբր. զմերկութիւն [7]Եբր. հանգուցից [8]Եբր. ցասեայց

[9]Եբր. մի՛ առնիցես [10]Եբր. քո [11]Եբր. որպէս թէ դոյզն ինչ էր. [12]Եբր. որպէս [13]Եբր. յագուրդ հացի, և անհոգութիւն հանգստեան եղեն նմա և դստերաց նորա [14]Եբր. զամօթ քո որ դատապարտեցեր զքորսն քո ի մեղս քո, որովք գործեցեր պղծութիւնս քան զնոսա. նոքա արդարացան [15]Եբր. քո։ (53) Եւ դարձուցից զգերութիւն նոցա, զգերութիւն

եւ [1]զդարձուցից զդարձուածս՟ Շամրնի
եւ զդստերաց նորա, եւ [2]զդարձուցից
54 զդարձուածս քո՟ ի մէջ նոցա. Զի
ընկալցիս [3]զանարգանս քո, եւ անար-
գեսցիս՟ յամենայնէ զոր արարեր ի
55 [4]բարկացուցանել զիս։ Եւ քոյր՟ քո
Սոդոմ եւ դստերք իւր անդրէն հաս-
տատեսցին որպէս եւ էինն ի սկզբանէ,
եւ Շամրին եւ դստերք իւր հաստա-
տեսցին անդրէն որպէս եւ էինն ի
սկզբանէ, եւ դու եւ դստերք քո հաս-
տատեսջիք ի նոյն՝ որպէս եւ էիք ի
56 սկզբանէ։ Եւ [5]եթէ ոչ էր Սոդոմ քոյր
քո համբաւ ի բերան քո յաւուրս հպար-
57 տութեան քո, Մինչչեւ յայտնեալ էին
չարիքն քո որպէս այժմ, նախատ եղեր
դստերացն Ասորւոց, եւ ամենեցուն որ
շուրջ զնովաւ էին, [6]դստերք այլազգ-
58 եաց, եւ սպառեալ շուրջ զքեւ՟։ Արդ
կրեա զամպարշտութիւնս քո եւ զա-
նօրէնութիւնս քո, ասէ Տէր։
59 Զի այսպէս ասէ Ադոնայի Տէր. Եւ ա-
րարից ընդ քեզ՝ որպէս արարերն, որպէս
անարգեցեր [7]զայն ամենայն՟ անցանել
60 զուխտիւ [5]իմով։ Եւ յիշեցից զուխտն
իմ որ ընդ քեզն էր յաւուրս տղայու-
թեան քո, եւ կանգնեցից [8]ինձ ուխտ
61 յաւիտենական. Եւ յիշեսցես զճանա-
պարհս քո եւ [9]անարգեսցիս, յորժամ
զմտաւ ածիցես՟ զքորս քո զերիցունսն
հանդերձ կրտսերօքն, եւ տաց զնոսա
62 քեզ [10]ի փորձ, եւ ոչ ի դաշնուորս. Եւ
կանգնեցից ես զուխտ իմ որ ընդ քեզ,
63 եւ ծանիցես թէ ես եմ Տէր. Զի յիշես-
ցես եւ ամաչեսցես, եւ մի՛ եւս լիցի
քեզ բանալ զբերան քո առաջի անար-
գանաց քոց, ի քաւել ինձ զամենայն
գործս քո զոր գործեցեր, ասէ Ադո-
նայի Տէր։

## ԳԼ. ԺԷ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, պատմեա [11]պատմութիւն,
եւ խօսեաց առակ առ տունն Իսրայելի,
3 Եւ ասասցես, Այսպէս ասէ Ադոնայի
Տէր. Արծուի մեծ՝ մեծաթեւ երկայնա-
տարած [12]լիամագիլ որ խորհեցաւ մտա-
նել ի Լիբանան, եւ առ զընտիր ընտիր
4 մայրիցն. Եւ եհատ զմատաղատունկն՟
եւ տարաւ յերկիրն [13]Քանանացւոց, եւ
անկեա՛ց զնա [14]ի պարսպաւոր քաղաքին՟։
5 Եւ առ ի սերմանէ երկրին, եւ [15]ցանեաց
ընդ երեսս դաշտին տունկ մանրա-
տունկ, ընդ առատ թեամբ ջրոյ՝ երեւելի
6 առնել կարգեաց՟ զնա. (Եւ բուսաւ եւ
եղեւ յորթ [16]տկար եւ փոքր տեսու-
թեամբ՟,) յերեւել ուռոց իւրոց ի նմա,
եւ արմատք նորա ի ներքոյ նորա էին եւ
եղեւ յորթ [5]մեծ, եւ եհան ոստ [17]ողկոյզս,
եւ արձակեաց զբարունակս իւր։
7 Եւ երեւեցաւ այլ արծուի մեծ, մե-
ծաթեւ [18]բազմամագիլ, եւ ահա որթս
այս [19]պատեալ է զնովաւ, եւ արմատք
սորա ի նմա, եւ ուռք նորա ի ներքոյ
նորա. եւ առաքեաց արբուցանել զնա
8 հանդերձ բուսով անկոյ նորա. Ի գեղե-
ցիկ դաշտին ընդ բազում ջրով պարա-
րեսցի,՟ արձակել շառաւիղս եւ բերել
9 պտուղս եւ լինել յորթ մեծ։ Վասն այ-
սորիկ ասա, Այսպէս ասէ Ադոնայի
Տէր. Եթէ իցէ աջողեսցի. ո՞չ ապաքէն
[20]արմատք փափկութեան նորա եւ պտուղ
նորա նեխեսցին, եւ՟ չորասցին ամե-
նայն շառաւիղք նորա, եւ ոչ բազկաւ
մեծաւ՝ եւ ոչ ազգաւ բազմաւ բուռն
հարկանել եւ խլել զնա յարմատոց իւ-
10 րոց։ Եւ արդ [21]պարարեսցի՞, մի՞ յաջո-
ղեսցի՟. ո՞չ ապաքէն ընդ մերձենալ հող-
մոյ խորշակի [22]ցամաքեսցի հանդերձ բու-
սովն եւ շառաւիղօք իւրովք՟։
11 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,

---

[1] Ոմն. զգերութիւն [2] Ոմն. զգերութիւն գերեաց քոց [3] Ոմն. զամօթ քո եւ ամաչեսցես [4] Ոմն. մխիթարել զքո զնոսա։ (54) Եւ քորք [5] Յոմն. պոռնիկ [6] Ոմն. դստերաց Փղշտացւոց որ անարգեն զքեզ շուրջանակի [7] Ոմն. զերդումն [8] Ոմն. քեզ [9] Ոմն. ամաչեսցես յորժամ ընկալցիս [10] Ոմն. ի դստերս [11] Ոմն. առեղծուած

[12] Ոմն. լի անօր թեւօք, երփն երփն գունովք, եկն ի Լիբանան, եւ առ զկատար եղեւնւոյն, (4) Զգլուխ մատաղ ոստոց նորա խլեաց [13] Ոմն. վաճառականաց [14] Ոմն. ի քաղաքին վաճառականաց [15] Ոմն. եդ զնա յանդի սերմանեաց. տարաւ առ ջուրս բազումս, իբրեւ զուռի տնկեաց [16] Ոմն. ուռճացեալ, խոնարհ հասակաւ [17] Ոմն. ոստս [18] Ոմն. բազմափետուր [19] Ոմն. խոնարհեցուցանէր զարմատս իւր առ նա, եւ արձակէր զոստս իւր ի նա, արբուցանել զնա յածուոց տնկոյն իւրոյ (8) Ի բարւոք դաշտին առ ջուրս բազումս տնկեցաւ [20] Ոմն. զարմատս նորա խլեսցէ, եւ զպտուղ նորա քաղեսցէ զի գօսասցի. [21] Ոմն. տնկեցաւ, միթէ յաջողեսցի՞ [22] Ոմն. ցամաքելով ցամաքեսցի. յածուս բուսոյն իւրոյ ցամաքեսցի

12 [1]Որդի մարդոյ, ասա ցտունդ Իսրայե-
լի՛ տուն" դառնացողաց, Ո՞չ գիտէք զինչ
է [2]այդ զոր ասացիդ. յորժամ եկեսցէ"
թագաւորն Բաբելացւոց յԵրուսաղէմ,
[3]առցէ զթագաւոր նորա եւ [4]զիշխանս,
տարցի" զնոսա առ ինքն ի Բաբելոն։
13 Եւ [5]առցէ ի զաւակէ թագաւորութեանն,
եւ [6]դիցէ ընդ նմա ուխտ, եւ [7]անցուս-
ցէ ընդ նզովս", եւ զիշխանս երկրին
14 [5]առցէ, Լինել ի թագաւորութիւն տկար,
ամենեւին ոչ բարձրանալ, պահել զուխտ
15 նորա եւ կալ ի նմին։ [8]Եւ ապստամ-
բեսցի" ի նմանէ առաքել հրեշտակս յԵ-
գիպտոս, տալ նմա երիվարս եւ զօրս
բազումս. եթէ լիցի աջողեսցի՞, եթէ ի-
ցէ ապրեսցի՞ որ առնէն [9]իրս հակա-
ռակս", եւ անցանէ ըստ ուխտ. եթէ
16 իցէ ապրեսցի՞։ Կենդանի եմ ես, ասէ
Ադոնայի Տէր, եթէ ոչ ի տեղւոջ [10]յո-
րում թագաւորն" թագաւորեցոյց զնա,
[11]որ անարգեաց զնզովս իմ եւ անց ըստ
ուխտն իմ որ" ընդ նմա ի մէջ Բաբե-
17 լոնի վախճանեսցի։ Եւ ոչ զօրութեամբ
մեծաւ, եւ ոչ ղնդաւ բազմաւ [12]տացէ
ընդ նմա պատերազմ Փարաւոն, պատ-
նէշս եւ նետակալս շինեսցէ" սատա-
18 կել զանձինս բազմաց. Զի անարգեաց
զերդումն, եւ անց զուխտիւն. եւ ահա
[13]ետու ի ձեռս նորա, եւ արարի" զայս
ամենայն ընդ նմա, մի՞թէ ապրեսցի՞։
19 Վասն այսորիկ ասա, Այսպէս ասէ
Ադոնայի Տէր. Կենդանի եմ ես, [14]ասէ
Ադոնայի Տէր." եթէ ոչ ըստ ուխտին
իմում զորով անց եւ ըստ երդմանն ի-
մոյ զոր անարգեաց՝ հատուցից ի գլուխ
20 նորա։ Եւ սփռեցից ի վերայ նորա զվարմ
իմ, եւ ըմբռնեսցի [15]ընդ պաշարմամբ ի-
մով". եւ ածից զնա ի Բաբելոն, եւ անդ
դատեցայց ընդ նմա ըստ անիրաւու-
թեանն նորա զոր անիրաւեցաւ առ իս։
21 Եւ [16]ըստ ամենայն խուսափանաց նորա,
յամենայն պատերազմունս" նորա սրով
անկցին, եւ [17]զմնացորդս նորա ընդ ա-
մենայն հողմս ցրուեսցից". եւ ծանիջիք
զի ես Տէր խօսեցայ։
22 [14]Վասն այնորիկ" այսպէս ասէ Ադո-
նայի Տէր. Եւ առից ես [18]յընտիր ընտիր
մայրից բարձուանդակին, եւ տաց ես ի
գլխոյ շառաւիղացն նորա ի սիրտս նո-
ցա. քշտեցից" եւ տնկեցից ի լերինն
23 [19]բարձու, Եւ կախեցից զնա զբարձրա-
ցեալ լեռնէն Իսրայելի. տնկեցից" եւ
ոստս արձակեսցէ եւ պտուղ բերցէ, եւ
եղիցի ի մայր մեծ. եւ հանգիցեն ընդ
նովաւ ամենայն [20]գազանք եւ ամենայն
հաւք, թռչունք" ընդ հովանեաւ նորա
դադարեսցեն. [14]եւ բարունակք նորա ի
24 նմին հաստատեսցին։" Եւ ծանիցեն ա-
մենայն փայտք դաշտի թէ ես եմ Տէր,
որ խոնարհեցուցանեմ զփայտ բարձրա-
ցեալ, եւ բարձրացուցանեմ զփայտ խո-
նարհեալ, ցամաքեցուցանեմ զփայտ
դալար, եւ դալարեցուցանեմ զփայտ
ղօսացեալ. ես Տէր խօսեցայ՝ եւ արա-
րից։

## ԳԼ. ԺԸ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, զինչ է ձեզ առակդ այդ՝
[21]ի մէջ որդւոցդ" Իսրայելի զոր ասեն,
թէ Հարք ագուխ կերան, եւ որդւոց ա-
3 տամունք առան։ Կենդանի եմ ես, ա-
սէ Ադոնայի Տէր, եթէ լինիցի առակդ
4 այդ որ ասի ի մէջ Իսրայելի։ Զի ամե-
նայն անձինք՝ իմ են, որպէս անձն հօր՝
նոյնպէս եւ անձն [22]որդւոյ. անձն որ մե-
5 ղիցէ՝ նոյն եւ մեռցի։ Այլ մարդն որ
արդար իցէ, եւ առնիցէ զիրաւունս եւ
6 զարդարութիւն, Ի վերայ լերանց [14]զո-
հեալ ոչ ուտիցէ, եւ զաչս իւր ի կուռս
տանն Իսրայելի ոչ արձակիցէ, եւ զկին
ընկերի իւրոյ ոչ ապականիցէ, եւ ի կին
7 իւր ապարահ ոչ մերձենայցէ, Եւ մար-
դոյ բռնութիւն ոչ լինիցի, զգրաւ պարտա-
պանի դարձուցանիցէ, յափշտակութիւն
ոչ յափշտակիցէ, զհաց իւր տացէ քաղ-
8 ցելոց եւ զմերկն զգեցուցանիցէ, Զար-

1 Եբր. Ասա ցտունդ [2]Եբր. այդ, ասա. Ահա եկն
[3]Եբր. եւ առ [4]Եբր. զիշխանս նորա, և տարաւ
[5]Եբր. առ [6]Եբր. եդ [7]Եբր. արկ զնա ընդ
երդմամբ [8]Եբր. Այլ ապստամբեցաւ [9]Եբր.
զայս [10]Եբր. թագաւորին որ [11]Եբր. զորոյ
անարգեաց զերդումն. եւ զորոյ անց ուխտին
[12]Եբր. եղիցի ընդ նմա Փարաւոն ի պատերազմի,
ի կանգնել պատնէշս. եւ ի շինել նետակալս
[13]Եբր. տուեալ էր նա զձեռն իւր, եւ արար
[14]Յեբր. պակասէ [15]Եբր. ի թակարդի իմում [16]Եբր.
զամենայն փախստեայս նորա, յամենայն վաշտս

[17]Եբր. [Մնացորդք ընդ ամենայն հողմս ցրուեսցին
[18]Եբր. ի բարձրաւանդակէ եղեւնին բարձու եւ
տնկեցից. եւ հատից ի գլխոյ մատաղ ոստոց
նորա զմատաղագոյնն, [19]Եբր. բարձու եւ
վերացելոյ. (23) Ի լերին անդ բարձու Իսրայելի
տնկեցից զնա, [20]Եբր. հաւք, ամենայն
թռչունք [21]Եբր. յերկրիդ [22]Եբր. որդւոյ՝ իմ է

ծամժ իւր ի վարձու ոչ տացէ, եւ տո-
կոսեօք անիրէն ոչ պահանջիցէ, յանի-
րաւութենէ զձեռս իւր դարձուցանիցէ,
դատաստան արդար առնիցէ ընդ այր եւ
9 ընդ ընկեր իւր, Ըստ հրամանաց իմոց
գնայցէ, զիրաւունս իմ պահիցէ [1]եւ
առնիցէ զնոսա", արդար է նա՝ կենօք
կեցցէ, ասէ Ադոնայի Տէր։
10 Եւ եթէ ծնանիցի որդի խառնագնաց,
11 արիւնահեղ, եւ առնիցէ [2]զմեղս. Ի ճա-
նապարհս հօրն իւրոյ արդարոյ՝ ոչ գնաց,
եւ" ի վերայ լերանց եկեր [3]զոհեալ, եւ
12 զկին ընկերի իւրոյ պղծեաց, Եւ զաղ-
քատն եւ զտնանկն յաղթահարեաց,
եւ յափշտակութիւն յափշտակեաց, եւ
զգրաւ ոչ դարձոյց, եւ ի պաշտօն կռոց
զաչս իւր արձակեալ անօրէնութիւն
13 գործեաց, Զարծաթ իւր ի վարձու ետ,
եւ վաշխիւ եւ տոկոսեօք [4]պահանջեաց.
նա մի կեցցէ որ զայն ամենայն անօ-
րէնութիւնս արար, մահու մեռցի, եւ
արիւն նորա ի վերայ նորին եղիցի։
14 Եւ եթէ ծնանիցի որդի, եւ տեսա-
նիցէ զամենայն մեղս հօր իւրոյ զոր
գործեաց, եւ երկիցէ՝ եւ ոչ արասցէ
15 զնոյնս. Ի վերայ լերանց [3]զոհեալ ոչ ե-
կեր, եւ զաչս իւր "ի խորհուրդս տանն
Իսրայէլի ոչ արձակեաց, եւ զկին ըն-
16 կերի իւրոյ ոչ ապականեաց, Եւ զմարդ
ոք ոչ յաղթահարեաց, եւ զգրաւ ոչ
գրաւեաց, եւ յափշտակութիւն ոչ յա-
փըշտակեաց, զհաց իւր ետ քաղցելոց
17 եւ զմերկն զգեցոյց, Եւ յանիրաւութե-
նէ դարձոյց զձեռս իւր, վաշխս եւ տո-
կոսիս ոչ առ, [6]արդարութիւն գործեաց,
եւ ըստ հրամանաց իմոց գնաց. նա մի՛
վախճանեսցի յանիրաւութիւնս հօր իւ-
18 րոյ, այլ կենօք կեցցէ։ Իսկ հայրն նո-
րա [7]եթէ նեղելով նեղիցէ, եւ յափշտա-
կելով յափշտակիցէ զեղբայր իւր, հա-
կառակութեան գործս" գործեաց ի մէջ
ժողովրդեան [8]իմոյ, մեռցի յանիրաւու-
թեան իւրում։
19 Եւ ասէք թէ Զի՞ է զի ոչ ետաս ա-
նիրաւութիւն հօրն՝ որդւոյն։ Զի որդին
[9]ողորմութիւն եւ արդարութիւն արար,
զամենայն օրէնս իմ պահեաց եւ արար
20 զնոսա, կենօք կեցցէ։ Անձն որ մեղի-
ցէ, նոյն եւ մեռցի. եւ որդի զհօր մեղս
մի՛ առցէ, եւ մի՛ հայր առցէ զանիրա-
ւութիւնս որդւոյ իւրոյ. արդարութիւն
արդարոյն ի վերայ նորին եղիցի, եւ
անօրէնութիւն անօրինին ի վերայ նո-
21 րին եղիցի։ Եւ անօրէնն եթէ դարձցի
յամենայն անօրէնութեանց իւրոց զոր
արար, եւ պահիցէ զամենայն պատուի-
րանս իմ, եւ արասցէ արդարութիւն
եւ [9]ողորմութիւն, կենօք կեցցէ, եւ մի՛
22 մեռանիցի։ Ամենայն յանցանք նորա զոր
գործեալ իցէ [10]եւ ամենայն անիրաւու-
թիւնք նորա զոր անիրաւեալ իցէ մի՛
յիշեսցին", այլ արդարութեամբ իւրով
23 զոր արար՝ կեցցէ։ Միթէ կամելով կա-
միցի՞մ զմահ մեղաւորին ասէ Տէր Տէր՝
որպէս զդառնալ նորա ի չար ճանապար-
24 հէ եւ կեալ։ Եւ ի դառնալ արդարոյն
յարդարութենէ իւրմէ, եւ առնել զա-
նիրաւութիւն, ըստ ամենայն անօրէ-
նութեանց՝ զոր առնիցէ [11]անօրէնն. ա-
մենայն արդարութիւնք 'նորա զոր ա-
րար՝ մի՛ յիշեսցին. ի յանցանս իւր յոր
անկաւ, եւ ի մեղս իւր զոր մեղաւ՝ ի
նոսին մեռցի։
25 Եւ ասէք թէ Ոչ [12]աջող է ճանապարհ
Տեառն. արդ լուարուք, տունդ Իսրա-
յէլի, միթէ ի՞մ ճանապարհ չիցէ [12]աջող.
ո՞չ ապաքէն ձեր ճանապարհք չեն [12]ա-
26 ջող։ Ի դառնալ արդարոյն յարդարու-
թենէ իւրմէ՝ եւ առնել զանիրաւութիւն,
մեռցի [13]յանօրէնութեանն զոր գործեաց"։
27 Եւ ի դառնալ անօրինին յանօրէնութենէ
իւրմէ զոր արար, եւ առնիցէ իրաւունս
եւ արդարութիւն, ինքն զանձն իւր
28 ապրեցոյց. Զի ետես եւ դարձաւ յա-
մենայն ամպարշտութեանց իւրոց զոր
արար. կենօք կեցցէ եւ մի՛ մեռցի։
29 Եւ ասեն տունդ Իսրայէլի, Ոչ ուղիղ
է ճանապարհ Տեառն. միթէ ի՞մ ճանա-
պարհ չիցէ ուղիղ, տունդ Իսրայէլի.
ո՞չ ապաքէն ձեր ճանապարհք չեն ու-
30 ղիղ։ Վասն այսորիկ զիւրաքանչիւր ոք
ըստ իւրում ճանապարհի դատեցայց,
տունդ Իսրայէլի, ասէ Ադոնայի Տէր.
դարձայք եւ դարձարուք յամենայն ամ-

[1]Եբր. առնել զճշմարտութիւն [2]Եբր. զմի ինչ յայսցանէ. (11) Այսինքն եթէ նա ոչ արար զայս ամենայն, այլ [3,5]Եբր. զոհեալ [4]Եբր. պահանջեաց. միթէ կեցցէ՞ [5]Եբր. ի կուռս [6]Եբր. զարդարութիւնս իմ [7]Եբր. որ նեղելով նեղեաց, և յափշտակելով յափշտակեաց զեղբայր իւր, և զոր չէրն բարի՝ [8]Եբր. իւրոյ

[9]Եբր. իրաւունս [10]Եբր. մի՛ յիշեսցին նմա [11]Եբր. անօրէնն, կեցցէ՞ [12]Եբր. Ուղիղ [13]Եբր. ի նոսին, յանօրէնութեան իւրում զոր գործեաց մեռցի

պարշտութեանց ձերոց, եւ ոչ լինիցի
31 ձեզ [1]ի տանջանս անիրաւութեան"։ Ըն-
կեցէք յանձանց ձերոց զամենայն ամ-
պարշտութիւնս ձեր զոր ամպարշտե-
ցայք [2]յիս, եւ արարէք ձեզ սիրտ նոր,
եւ ոգի նոր. [2]եւ արարէք զամենայն
զպատուիրանս իմ." եւ ընդէ՞ր մեռա-
32 նիք, տունդ Իսրայէլի, [2]ասէ Տէր" Զի ոչ
կամիմ զմահ [3]մեռելոյն, ասէ Ադո-
նայի Տէր, [2]այլ զի դարձցի ի ճանա-
պարհաց իւրոց չարաց, եւ կեցուսցէ
զանձն իւր." արդ եկայք դարձարուք,
եւ կեցէք։

ԳԼ. ԺԹ

[2]Ողբք ի վերայ իշխանին Իսրայէլի։"

1 Եւ դու, [2]որդի մարդոյ," ողբս առ ի
2 վերայ [4]իշխանին Իսրայէլի, Եւ ասաս-
ցես, Զի՞ է [5]զի եղեւ մայր քո" ի մէջ
առիւծուց, [2]կորիւնք ի մէջ առիւծուց
3 բազմացոյց զկորիւնս իւր։ Եւ [6]զարգա-
ցաւ կորիւն մի ի կորեանց նորա", եւ
առիւծացաւ, եւ ուսաւ յափշտակել
զյափշտակութիւն, եւ եղեւ մարդա-
4 խանձ։ Լուան զնմանէ ազգք, [7]ըմբռնե-
ցին զնա յապականութիւն". եւ տարան
զնա գայլ ի բերան յերկիրն Եգիպտաց-
5 ւոց։ Եւ տեսեալ զի անջատեցաւ ի նմա-
նէ եւ կորեաւ յոյս նորա, եւ նա մեւս
եւս այլ կորիւն ի կորեանց իւրոց ա-
6 ռիւծացոյց։ Եւ շրջէր ի մէջ առիւծուց.
առիւծացաւ, եւ ուսաւ յափշտակել
յափշտակութիւն, եւ եղեւ մարդախանձ։
7 [8]Արաայր յանդգնութեամբ իւրով. զքա-
ղաքս" կործանէր, եւ զերկիրն լրիւ իւ-
րով ապականէր ի մռնչւոյ բարբառոյ
8 իւրոյ։ Եւ յարեան ի վերայ նորա ազգք
յիւրաքանչիւր աշխարհաց շուրջանակի,
եւ պատեցին զնա [9]թակարդօք յապա-
9 կանութիւն"։ Գայլ ի բերան հարին,
եւ տարան դայռապղիւ առ արքայն
Բաբելացւոց, եւ արկին զնա ի բանտ.
զի մի՛ եւս լուիցի բարբառ նորա ի
վերայ լերանցն Իսրայէլի։

[1]Եբր. անիրաւութիւնն ի գայթակղութիւն [2]Յն. պակասէ [3]Եբր. մեռելոյն [4]Եբր. իշխանացն [5]Եբր. մայր քո. մատակ առեւծ է որ ննջէ [6]Եբր. սնոյց զմին ի կորեանց իւրոց [7]Եբր. ըմբռնեցաւ յորոգայթի նոցա [8]Եբր. Եւ ծանեաւ զապարանս (կամ, զայրիս) նոցա, եւ զքաղաքս նոցա [9]Եբր. Թակարդօք. ըմբռնեցաւ յորոգայթ նոցա

10 Մայր քո իբրեւ զորթ, եւ [10]իբրեւ զծա-
ղիկ նռնենեաց" տնկեալ ի գնացս ջուրց,
բոյս նորա եւ պտուղ նորա եղեւ ի ջուրց
11 բազմաց։ Եւ [11]եղեւ նորա գաւազան
զօրութեան ի վերայ ազգին" իշխանաց,
եւ բարձրացաւ [12]մեծութեամբ ի մէջ
զարատամանց, եւ [13]ետես զմեծութիւն
12 իւր" ի բազմութեան ուռոց իւրոց։ Եւ
բեկաւ ի բարկութեան եւ յերկիր կոր-
ծանեցաւ, եւ հողմ խորշակի ցամաքե-
ցոյց [14]զշառաւիղս նորա. խնդրեցաւ ի
նմանէ վրէժ, եւ ցամաքեցաւ գաւա-
զան" զօրութեան նորա, եւ հուր մա-
13 շեաց զնա։ Եւ արդ տնկեցին զնա յա-
14 նապատի յերկրի անջրդի։ Եւ ել հուր
[15]յընտիր ընտիր գաւազանաց նորա, եւ
եկեր զնա. եւ ոչ գոյր ի նմա գաւա-
զան զօրութեան. ազգ յառակս ողբոց"
եւ յողբս եղիցի։

ԳԼ. Ի

[2]Առ ծերս տանն Իսրայէլի։"

1 Եւ եղեւ յամին եւթներորդի, յամ-
սեանն հինգերորդի որ օր տասն էր ամ-
սոյն, եկին արք ի ծերոց [2]տանն Իսրա-
յէլի հարցանել ի Տեառնէ, եւ նստան
առաջի իմ։
2 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
3 Որդի մարդոյ, խօսեաց ընդ ծերսդ [2]տանդ
Իսրայէլի եւ ասասցես ցդոսա, Այսպէս
ասէ Ադոնայի Տէր. Եթէ հարցանե՞լ
գայք դուք առ իս. կենդանի եմ ես ե-
թէ տաց ինչ ձեզ պատասխանի, ասէ
4 Ադոնայի Տէր։ [16]Եթէ իցէ խնդրեցի՞ց
զվրէժ նոցա", որդի մարդոյ. զմեղաց
հարց դոցա դիր դոցա վկայութիւն,
5 Եւ ասասցես ցդոսա, Այսպէս ասէ [17]Տէր
Աստուած. Յօրէ յորմէհետէ ցանկացայ
ես տանդ Իսրայէլի, եւ ծանուցայ" զա-
ւակի տանդ Յակոբու, եւ ծանուցայ
նոցա յերկրին Եգիպտացւոց, [18]ձեռն ե-
տու" նոցա եւ ասեմ, Ես եմ Տէր Աս-

[10]Եբր. ըստ նմանութեան (կամ, յարեան) քո [11]Եբր. եղեն նորա շառաւիղք զօրութեան ի գաւազանս [12]Եբր. հաստ նորա [13]Եբր. երեւեցաւ ի բարձրութեան իւրում [14]Եբր. զպտուղս նորա. խորտակեցան և ցամաքեցան շառաւիղք [15]Եբր. ի շառաւղէ ոստոց նորա եւ կերաւ զպտուղ նորա. և ոչ գոյր ի նմա շառաւիղ զօրութեան, ի գաւազան իշխանի։ Ողբ է այն [16]Եբր. Միթէ դատեսցի՞ս զնոսա. միթէ դատեսցի՞ս [17]Եբր. Տէր Եհովայ. Յօրէ յորմէհետէ ընտրեցի զԻսրայէլ, եւ ամբարձի զձեռս իմ [18]Եբր. եւ ամբարձի զձեռն իմ

6 տուեալ ձեր. Յաւուր յայնմիկ [1]ձեռն ե-
տու նոցա" հանել զնոսա յերկրէն Եգիպ-
տացւոց, յերկիրն զոր պատրաստեցի
նոցա, երկիր որ բղխէ զկաթն եւ զմեղր,
7 [2]քաղցր քան զամենայն երկիր": Եւ ա-
սացի ցնոսա, Իւրաքանչիւր ոք զգար-
շելիս իւր յաչաց իւրոց ի բաց ընկեա-
ցէ, եւ [3]ի գնացսն Եգիպտացւոց մի՛
պղծիք. ես եմ Տէր Աստուած ձեր:
8 Եւ ապստամբեցան յինէն, եւ ոչ կա-
մեցան լսել ինձ. իւրաքանչիւր ոք զգար-
շելիս իւր յաչաց իւրոց ոչ ընկէց ի բաց,
եւ [4]զգնացսն Եգիպտացւոց ոչ թողին,
եւ ասացի հեղուլ զսրտմտութիւն իմ ի
վերայ նոցա, կատարել զբարկութիւն
9 իմ ի նոսա ի մէջ Եգիպտացւոցն: Բայց
արարի, զի անունն իմ ամենեւին մի՛
պղծեսցի առաջի ազգացն յորոց միջի
իցեն նոքա, յորս ծանուցայ նոցա ա-
ռաջի նոցա, հանել զնոսա յերկրէն Ե-
գիպտացւոց:
10 Եւ հանի զնոսա յերկրէն Եգիպտաց-
11 ւոց, եւ ածի զնոսա յանապատն. Եւ
ետու նոցա զհրամանս իմ, եւ զիրա-
ւունս իմ ցուցի նոցա, զոր առնիցէ
12 մարդ, եւ կեցցէ ի նոսա: Եւ զշաբաթս
իմ ետու նոցա լինել նշանակ ընդ իս եւ
ընդ նոսա, ճանաչել նոցա թէ ես եմ Տէր
որ սրբեմ զնոսա: [5]Եւ ասացի ցտունն
Իսրայէլի յանապատի անդ՝ թէ ի հրա-
մանս իմ գնացէք, եւ ոչ գնացին. եւ
զիրաւունս իմ պահեցէք, առնել զնոսա,
զոր թէ առնիցէ մարդ՝ կեցցէ նոքօք:"
13 Եւ դառնացուցին զիս տունն Իսրա-
յէլի յանապատին. ըստ հրամանաց իմոց
ոչ գնացին, եւ զիրաւունս իմ մերժե-
ցին, զոր թէ առնիցէ մարդ՝ կեցցէ նո-
քօք, եւ զշաբաթս իմ պղծեցին յոյժ.
եւ ասացի հեղուլ զսրտմտութիւն իմ
14 յանապատին սատակել զնոսա: Եւ ա-
րարի, զի անունն իմ ամենեւին մի՛ պղծես-
ցի առաջի ազգացն յորոց հանի զնոսա
15 յանդիման նոցա: Եւ ես համբարձի զձեռս
իմ ի վերայ նոցա յանապատին, [5]համօ-
րէն չտանել զնոսա յերկիրն զոր ետու
նոցա, երկիր որ բղխէ զկաթն եւ մեղր,
16 [2]քաղցր քան զամենայն երկիր": Փոխա-
նակ զի զիրաւունս իմ մերժեցին, եւ
ըստ հրամանաց իմոց ոչ գնացին, եւ
զշաբաթս իմ պղծեցին, [6]եւ զհետ խոր-
17 հրդոց սրտից իւրեանց գնացին": Եւ
խնայեաց ի նոսա ակն իմ ջնջել զնոսա.
եւ ոչ արարի զնոսա ի վախճան յանա-
պատին:
18 Եւ ասացի [7]ցնոսա յանապատին, Ըստ
կրօնից հարցն ձերոց մի՛ գնայք, եւ զի-
րաւունս նոցա մի՛ պահէք, եւ [8]ի գնացս
նոցա մի՛ խառնակիք եւ" մի՛ պղծիք.
19 Ես եմ Տէր Աստուած ձեր. ըստ հրա-
մանաց իմոց գնացէք, եւ զիրաւունս իմ
20 պահեցէք եւ արարէք զնոսա. Եւ զշա-
բաթս իմ սրբեցէք, եւ եղիցի նշանակ
ընդ իս եւ ընդ ձեզ, ճանաչել ձեզ թէ
ես եմ Տէր Աստուած ձեր:
21 Դառնացուցին զիս եւ որդիք նոցա,
ըստ հրամանաց իմոց ոչ գնացին, եւ
իրաւանց իմոց ոչ զգուշացան առնել
զնոսա, զոր թէ առնիցէ մարդ՝ կեցցէ
նոքօք, եւ զշաբաթս իմ պղծէին. եւ
ասացի հեղուլ զսրտմտութիւն իմ ի վե-
րայ նոցա, յանապատին կատարել զբար-
22 կութիւն իմ ի վերայ նոցա: Եւ դար-
ձուցի զձեռն իմ ի նոցանէ, եւ արարի,
զի անունն իմ ամենեւին մի՛ պղծեսցի
առաջի ազգացն, յորոց հանի զնոսա յան-
դիման նոցա:
23 Եւ ես ամբարձի զձեռն իմ ի վերայ
նոցա յանապատի անդ, ցրուել զնոսա
ընդ ազգս, եւ ցանել զնոսա ընդ գա-
24 ւառս. Փոխանակ զի զիրաւունս իմ ոչ
արարին, եւ զհրամանս իմ մերժեցին,
եւ զշաբաթս իմ պղծեցին, եւ զհետ
[9]խորհրդոց հարցն իւրեանց էին աչք նո-
25 ցա: Եւ ես ետու նոցա հրամանս ան-
բարիս, եւ իրաւունս, որովք ոչ կեց-
26 ցեն: Եւ պղծեցի զնոսա ի պատարագս
իւրեանց, [10]ընդ անցանել ինձ ընդ ա-
մենայն" որ բանայ զարգանդ, զի սա-
տակեցից զնոսա, եւ ծանիցեն եթէ ես
եմ Տէր:
27 Վասն այսորիկ խօսեաց ընդ տանդ
Իսրայէլի, որդի մարդոյ, եւ ասասցես
ցնոսա, Այսպէս ասէ Ադոնայի Տէր.
Մինչեւ ցայսչափ բարկացուցին զիս
հարքն ձեր յանցանօքն իւրեանց զոր
28 յանցեան առ իս: Եւ տարայ զնոսա յեր-
կիրն յոր ամբարձի զձեռն իմ տալ նոցա

[1]Եբր. զձեռն իմ ամբարձի ի նոսա [2]Եբր. փառք է նա ամենայն երկրի [3]Եբր. ի կուռսն [4]Եբր. զկուռս [5]Եբր. զօրէն

[6]Եբր. զի զհետ կռոց դնայ սիրտ նոցա [7]Եբր. ցորդիս նոցա [8]Եբր. ի կուռս նոցա [9]Եբր. կռոց [10]Եբր. թողեալ նոցա անցուցանել ընդ հուր զամենայն

զնա. եւ տեսին անդ զամենայն բլուր
բարձր եւ զամենայն ծառ վարսաւոր, եւ
զոհեցին անդ[1] դիցն իւրեանց, եւ կարգեցին
անդ զոհս պատարագաց իւրեանց՝, եւ
արկին զխունկս անուշութեան իւրեանց,
29 եւ նուիրեցին անդ զնուէրս իւրեանց։ Եւ
ասացի ցնոսա, Զի՞նչ[2] է աբրամեայդ այդ յոր
դուքդ մտանէք. եւ կոչեցին զանուն նորա
Աբրամեա,՝ մինչեւ ցայսօր ժամանակի։
30 Վասն այնորիկ ասա ցտունն Իսրա-
յելի, Այսպէս ասէ [3]Տէր Աստուած. Ե-
թէ յանօրէնութիւն՝ հարցն ձերոց պղծիք,
եւ զհետ գարշելեացն նոցա պոռնկիք,
31 Եւ ի պտուղս պատարագացն ձերոց եւ
[4]յընծայս որդւոցն ձերոց, եւ ի զատու-
ցանել որդւոյն ձերոյ՝ ածել զհրով.
պղծիք յամենայն խորհուրդս՝ ձեր մին-
չեւ ցայսօր ժամանակի, եւ ես տայցե՞մ
ձեզ պատասխանի, տունդ Իսրայելի.
կենդանի եմ ես, ասէ Ադոնայի Տէր,
32 եթէ տաց ձեզ պատասխանի։ Եւ եթէ
անկցի յոգիս ձեր այդ, ոչ լիցի որպէս
դուքդ ասէք, եթէ Եղիցուք մեք իբրեւ
զհեթանոսս եւ իբրեւ զազգս երկրի
33 պաշտել զփայտս եւ զքարինս։ [5]Վասն
այդորիկ՝ կենդանի եմ ես, ասէ Ադո-
նայի Տէր, եթէ ոչ հզօր ձեռամբ եւ
բարձրացեալ բազկաւ եւ հեղեալ ցաս-
34 մամբ թագաւորեցից ի վերայ ձեր։ Եւ
հանից զձեզ յազգաց, եւ ընկալայց զձեզ
յաշխարհաց ուր ցրուեալ իցէք ի նոսա,
հզօր ձեռամբ եւ բարձրացեալ բազկաւ
35 եւ հեղեալ ցասմամբ։ Եւ ածից զձեզ
յանապատ ազգացն, եւ դատ եղից անդ
36 ընդ ձեզ դէմ յանդիման։ Զոր օրինակ
եղի դատ ընդ հարսն ձեր յանապատի
անդ [6]յորժամ հանի զնոսա յերկրէն՝ Ե-
գիպտացւոց, այնպէս դատեցայց ընդ
37 ձեզ, ասէ [*]Տէր Տէր Աստուած՝։ Եւ
անցուցից զձեզ ընդ ցպով [5]իմով,
եւ մուծից զձեզ ընդ [7]թուով ուխտի ի-
38 մոյ՝։ Եւ որոշեցից ի ձէնջ զամպարիշտս
եւ [8]զապստամբս. զի ի պանդխտութենէ՝
նոցա հանից զնոսա, եւ յերկիրն Իսրա-
յելի ոչ մտցեն, եւ ծանիջիք թէ ես եմ
Տէր Աստուած։
39 Եւ դուք, տունդ Իսրայելի, այսպէս
ասէ Տէր [9]Տէր Աստուած. Նախ ի բաց
ընկեցէք զիւրաքանչիւր զգնացս իւր,
եւ ապա թէ լսիցէք՝ ինձ, եւ զանուն
իմ սուրբ ոչ պղծիցէք պատարագօք
40 ձերովք եւ [10]զնացիւք ձերովք։ Զի ի
վերայ լերին սրբոյ իմոյ, ի վերայ
լերին բարձու Իսրայելի, ասէ Տէր Տէր,
անդ ծառայեսցեն ինձ ամենայն տունդ
[11]Իսրայելի ի սպառ, եւ անդ ընկալայց,
եւ անդ այց արարից ընծայից ձերոց՝,
եւ զպտուղս երախայրեաց ձերոց յա-
41 մենայն սրբութիւնս ձեր։ Ի հոտ անու-
շից ընկալայց[12], հանել զձեզ ի ժողովըր-
դոց, եւ ընդունել զձեզ յաշխարհաց ուր
ցրուեալն էիք ի նոսա. եւ սուրբ եղէց
42 ի ձեզ յանդիման ժողովրդոց։ Եւ ծանի-
ջիք թէ ես եմ Տէր ի տանել զձեզ յեր-
կիրն Իսրայելի, յերկիրն յոր ամբարձի
43 զձեռն իմ տալ զնա հարցն ձերոց։ Եւ
յիշեսջիք անդ զճանապարհս ձեր, եւ
զգնացս ձեր որովք պղծեցայք ի նոսա.
եւ [13]կոծեսջիք զերեսս ձեր ի վերայ՝ ա-
մենայն անիրաւութեանց ձերոց զոր ա-
44 րարէք։ Եւ ծանիջիք թէ ես եմ Տէր,
[14]տանել ձեզ զայն այնպէս. զի մի՛ ա-
նուն իմ պղծեսցի՝ ըստ ճանապարհաց
ձերոց չարաց եւ ըստ ապականեալ գնա-
ցից [15]ձերոց, ասէ Ադոնայի Տէր։
45 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
46 Որդի մարդոյ, հաստատեա զերեսս քո
[16]ի Թեման, եւ հայեաց [17]ի Դարոմն. եւ
մարգարեաց ի վերայ անտառի [18]իշխանին
47 Նագեբայ՝. Եւ ասասցես ցանտառն[19]Նա-
գեբայ, Լուր զպատգամս Տեառն, այս-
պէս ասէ Տէր Տէր [5]Աստուած. Ահա-
ւասիկ ես հարից զքեզ հուր, եւ կերի-
ցէ ի քեզ զամենայն փայտ դալար եւ
զամենայն փայտ չոր, եւ ոչ շիջցի բոցն
բորբոքեալ, եւ այրեսցին ի նմա ամենայն
դէմք [20]յարեւելից մինչեւ ի հիւսիսի։

[1] Եբր. զզոհս իւրեանց, եւ մատուցին անդ զպատարագս իւրեանց զայրացուցիչս [2] Եբր. են բարձունքդ յոր գնայքդ անդր. եւ կոչեցաւ անուն նորա Բարձունք [3] Եբր. Տէր Եհովայ, դուք ի ճանապարհս [4] Եբր. յանցուցանել զորդիս ձեր ընդ հուր, պղծիք յամենայն կուռս [5] Յեբր. պակասէ [6] Եբր. յերկրին [*] Եբր. Տէր Եհովայ [7] Եբր. կապանօք ուխտի [8] Եբր. զապստամբս յիս. յերկրէն պանդխտութեան

[9] Եբր. Եհովայ, Երթայք, պաշտեսցէ իւրաքանչիւր զկուռս իւր այսուհետեւ, զի ոչ լսէք [10] Եբր. կռովք [11] Եբր. Իսրայելի, ամենեքին յերկրին. անդ ընկալայց զնոսա, անդ խնդրեսցեմ զընծայս ձեր [12] Եբր. այնուհետեւ, զձեզ [13] Եբր. տաղտկալի լինիջիք յաչս ձեր վասն [14] Եբր. յառնել իմ ընդ ձեզ վասն անուան իմոյ, եւ ոչ [15] Եբր. ձերոց, տունդ Իսրայելի [16] Այսինքն՝ ի հարաւ [17] Եբր. ի Դարոմ, այսինքն՝ ի հարաւ. [18] Եբր. դաշտին հարաւոյ [19] Այսինքն՝ հարաւոյ [20] Եբր. ի հարաւոյ

48 Եւ ծանիցէ ամենայն մարմին, եթէ ես
49 Տէր վառեցի զնա եւ ոչ շիջցի։ Եւ ա-
սեմ, Քաւ լիցի, Տէր Տէր. նոքա ասեն
ցիս, Ո՞չ ապաքէն առակ է այդ որ ասիդ։

ԳԼ. ԻԱ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 [1]Վասն այդորիկ մարգարէաց, որդի մար-
դոյ, եւ" հաստատեա զերեսս քո ի վե-
րայ Երուսաղեմի. եւ հայեաց ի սրբու-
թիւնս [2]նոցա, եւ մարգարէասցես ի վե-
3 րայ երկրին Իսրայէլի, Եւ ասասցես
ցերկիրն Իսրայէլի, Այսպէս ասէ Տէր
[2]Տէր Աստուած". Ահաւասիկ ես ի վերայ
քո, եւ մերկացից զվաղակաւորն իմ ի
պատենից իւրոց, եւ սատակեցից ի մի-
ջոյ քումմէ [3]զանիրաւն եւ զանօրէնն։
4 Փոխանակ զի սատակեցից ի քէն [3]զանի-
րաւն եւ զանօրէնն, վասն այնորիկ ելցէ
վաղակաւորն իմ ի պատենից իւրոց ի
վերայ ամենայն մարմնոյ՝ [4]յարեւելից
5 մինչեւ ի հիւսիսի։ Եւ ծանիցէ ամե-
նայն մարմին թէ ես Տէր մերկացի զվա-
ղակաւորն իմ ի պատենից իւրոց, եւ անդ-
6 րէն ոչ եւս դարձցի։ Եւ դու, որդի մար-
դոյ, հեծեծեսջիր բեկեալ միջով քով,
եւ հեծեծեսջիր ցաւովք յանդիման նոցա։
7 Եւ եղիցի թէ ասիցեն ցքեզ, Վասն է՞ր
հեծես, ասասցես, Զի բօթ լուայ, եւ գա-
լոց է. եւ բեկցին ամենայն սիրտք, եւ
ամենայն ձեռք լքցին, եւ ցամաքեսցի
ամենայն [5]մարմին եւ ամենայն շունչ,
եւ ամենայն երանք ապականեսցին գի-
ջութեամբ". ահաւասիկ գայ եւ եղիցի,
ասէ [6]Տէր Տէր Աստուած"։
8 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
9 Որդի մարդոյ, մարգարէաց եւ ասաս-
ցես, Այսպէս ասէ [2]Ադոնայի Տէր. Եւ
ասասցես, Սուր, սուր [7]սրեաց եւ զայ-
10 րացիր. Զի սպանցես զսպանումն՝ սրեաց,
ջինջ լեր, պատրաստեաց ի հաշումն, կո-
տորեա, արհամարհեա. որդեակ իմ, յա-
11 պաւեա զամենայն ծառ։ Եւ ետ զնա ի
պատրաստ, ունել ի ձեռին իւրում. սրեցաւ,
պատրաստ է սուրն տալ" ի ձեռս կո-
12 տուչի։ Զայն առ, ճիչ բարձ, որդի մար-
դոյ. զի եկն եհաս այն ի վերայ ժողո-
վրդեան իմոյ, եւ ի վերայ իշխանացն
Իսրայէլի. [8]պանդուխտք եղիցին, քան-
զի եհաս սուրն" ի վերայ ժողովրդեան
իմոյ. վասն այնորիկ [9]ծափս հար ձե-
13 ռամբ քով, զի արդարացաւ։ Եւ զի՞նչ
է, ապրիցի՞ ազգն. ոչ եղիցի", ասէ Տէր
14 Տէր։ Եւ դու, որդի մարդոյ, մարգա-
րեաց, ծափս հար ձեռամբ. [10]կրկնեա
զսուրն, զի երրորդ սուրն վիրաւորաց
է. սուր վիրաւորացն սատակացեալ է,
15 եւ զարհուրեցուսցէ զնոսա. Զի բեկցին
սիրտք իւրեանց, բազմասցին ակարա-
ցեալք յամենայն դրունս նոցա, զի մատ-
նեցան ի սպանումն սրոյ. դեղեցկացաւ
ի փայլումն, սրեալ եղեւ ի սպանումն։
16 Շրջեաց, յածեաց, սրեաց յաջմէ եւ յա-
17 հեկէ. ուր քո երեսք զարթիցեն", Եւ
ես անդ ծափս հարից եւ [11]կոյծեցից,
եւ արձակեցից զբարկութիւն" իմ. ես Տէր
խօսեցայ։
18 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
19 Եւ դու, որդի մարդոյ, պատրաստեա
դու քեզ երկուս ճանապարհս, մտանել
սրոյ արքային Բաբելացւոց, զի ի միո-
ջէ աշխարհէ ելցեն [12]երկու առաջք. եւ
ձեռն պատրաստել ի գլուխ ճանապարհի
քաղաքին. ի սկզբան ճանապարհին կար-
20 գեսցես։ Եւ դու պատրաստեա եւ յար-
դարեա" ճանապարհ մտանել սրոյն ընդ
Ռաբովթ որդւոցն Ամոնայ եւ ի վերայ
Հրէաստանի, ի վերայ Երուսաղեմի [13]ի
մէջ նորա"։
21 Զի [14]եկեսցէ կացցէ" արքայն Բաբե-
լացւոց [15]ի վերայ հին" ճանապարհին, ի
գլուխ երկուց ճանապարհաց, հմայս
հմայել, գաւազանս ընկենուլ, հարցումն
հարցանել ի դրօշելոց, լերդահմայ լի-

[1] Ոմն. Որդի մարդոյ [2] Ոմն. դոլուն [3] Ոմն. զարդարն
[4] Ոմն. ի հարաւոյ [5] Ոմն. ոգի. և ամենայն ծունկ
դարձցի ի ջուր [6] Ոմն. Տէր Ադոնայ [7] Ոմն.
սրեցաւ, սրբեցաւ իսկ։ (10) Ի խողխողել խող-
խողումն սրեցաւ, զի եղիցի ջինջ՝ սրբեցաւ.
լերո՞ւք ուրախ. գաւազան որդւոյ իմոյ անարգէ
զամենայն փայտ։ (11) Եւ ետ զնա ի սրբել, ունել
ի ձեռին. այս սուր սրեալ, եւ նոյն սրբեալ է,
տալ զնա

[8] Ոմն. երկեւղ վասն սրոյն եղիցի [9] Ոմն. Հար
յագդր քո։ (13) Զի գոյ փորձ. և զի՞նչ լինիցի,
եթէ անարգիչ գաւազանն չգոյր [10] Ոմն. եւ
կրկնեսցի սուրն երիցս, սուր սպանելոցն. այս է
սուր սպանելոյն մեծի որ եմուտ առ նոսա։
(15) Զի բեկցի սիրտ, եւ բազմասցին խոչք,
յամենայն դրունս նոցա ետու զերկեւղ սրոյն,
բարէ՛, արարաւ ի փայլել, սրեցաւ ի խող-
խողել։ (16) Ամփոփեա զքեզ, դարձիր յաջ,
պատրաստեա զքեզ, դարձիր յահեակ. յո՛ եւ
դիմեսցեն երեսք քո [11] Ոմն. հանդուցից զցա-
սումն [12] Ոմն. երկոքին նոքա. ընտրեա տեղի,
ի գլուխ ճանապարհի քաղաքին ընտրեա։ (20)
Յարդարեա [13] Ոմն. ամրացելոյ [14] Ոմն. եկաց
[15] Ոմն. յանգս

22 նել ։ Ընդ աջմէ իւրմէ եղեն նմա հմայքն
ի վերայ Երուսաղեմի, արկանել [1]պատ-
նէշ, բերանալիր գոչել, բարձրացուցա-
նել զձայն աղաղակի. արկանել [1]խից ի
վերայ դրանց նորա, եւ արկանել հող
23 եւ շինել նետակալս ։ [2]Եւ նա նոցա այն-
պէս թուիցի՝ որպէս հմայիցէ ով հմայս
առաջի նոցա, եւ եւթներորդիցէ նոցա
եւթներորդս, եւ ինքն յուշ արասցէ զա-
24 նիրաւութիւնս նոցա յիշել" ։ Վասն այ-
նորիկ այսպէս ասէ [3]Տէր Տէր Աստուած".
Փոխանակ զի յուշ արարէք զանիրաւու-
թիւնս ձեր, ի յայտնել ամպարշտու-
թեանցն ձերոց, յերեւել մեղացն ձերոց՝
յամենայն [4]ամպարշտութիւնս ձեր եւ ի"
գնացս ձեր, փոխանակ զի դուք ինք-
նին յիշեցուցէք՝ [5]ի նոսին սատակես-
25 ջիք" ։ Եւ դու, պիղծ եւ անօրէն իշխանդ
Իսրայելի, որոյ եկեալ է օր [6]վախճանի
26 ի ժամանակի անիրաւութեան[7], Այսպէս
ասէ Տէր Տէր. Ի բաց առ ի քէն զխոյր
եւ հան զպսակդ, զի այդ ոչ այդպէս
վճարեսցի. խոնարհեցուցեր զբարձրա-
ցեալն, եւ բարձրացուցեր զխոնարհն.
27 Արդ [8]անիրաւութիւն յանիրաւութեանց
վերայ" եդից զնա. եւ այդ ոչ այդպէս
եղիցի, մինչեւ եկեսցէ [9]որում անկն է,
եւ տաց ի ձեռս նորա" ։
28 Եւ դու, որդի մարդոյ, մարգարեաց
եւ ասասցես, Այսպէս ասէ [8]Տէր Տէր
Աստուած" ցորդիսն Ամոնայ, եւ վասն
նախատանացն նոցա, եւ ասասցես.
Սուր՝ սուր [10]հանեալ ի սպանումն, մեր-
29 կացեալ ի վախճան ։ Զարթիր զի փայ-
լեսցես տեսլեամբ նանրութեան, եւ ի
հմայել հմայս ստութեան, մատնել զնա
քեզ, ի պարանոցս վիրաւորացն անօրի-
նացն, որոց եկեալ հասեալ է օր վախ-
ճանի ի ժամանակի անիրաւութեան ։
30 Դարձ անդրէն, մի՛ աստէն լուծանիր ի
տեղւոջ յորում ծնեալդ ես. անդրէն
31 յերկրին քում" դատեցայց զքեզ. Եւ
հեղից ի վերայ քո զբարկութիւն իմ. հրով
բարկութեան իմոյ փչեցից ի քեզ, եւ
մատնեցից զքեզ ի ձեռս արանց [11]բար-
բարոսաց՝ որ գործեն զապականութիւն" ։
32 Եւ եղիցես կերակուր հրոյ, եւ արիւն
քո եղիցի ի մէջ երկրի [4]քո, եւ յիշա-
տակ քո մի՛ գտցի. զի ես Տէր խօսեցայ ։

ԳԼ. ԻԲ

[4]Առ որդիսն Իսրայելի ։"

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Եւ դու, որդի մարդոյ, [12]եթէ դատիցես,
դատեսջիր" զքաղաքն արեանց, եւ խայ-
տառակեսցես զամենայն զանօրէնու-
3 թիւնս նորա, Եւ ասասցես, Այսպէս
ասէ [3]Տէր Տէր Աստուած". Ո՛ քաղաք,
որ հեղու զարիւն ի մէջ իւրում, [13]ի
հասանել ժամանակի իւրոյ. եւ խորհի
խորհուրդ զանձնէ՝ պղծել զանձն իւր
4 յարիւնս նոցա ։ Զուր հեղեր, թաթաւե-
ցար, եւ ի խորհուրդսն քո զոր խորհե-
ցար" պղծեցար, եւ մերձեցուցեր զա-
ւուրս քո, եւ [14]ածեր զժամանակ ամաց
քոց". վասն այնորիկ ետու զքեզ ի նա-
խատինս ազգաց, եւ յայպն ամենայն
5 աշխարհաց ։ Որ մօտ ի քեզ էին եւ հե-
ռի իքէն՝ այպանեսցեն [15]զքեզ եւ ասաս-
ցեն, թէ Անուանիդ ի պղծութիւն մատ-
նեցար. քանզի յաճախեցեր յանօրէնու-
6 թիւնս" ։ Ահաւասիկ առաջնորդք տանդ
Իսրայելի՝ իւրաքանչիւր [16]ընդ մերձա-
ւորս ազգի իւրեանց խառնակէին ի քեզ,
7 զի հեղցեն արիւն" ։ Զհայր եւ զմայր
անարգէին ի քեզ, եւ ընդ եկին եւ ընդ
պանդխտին անիրաւութեամբ գնային ի
քեզ, զորբն եւ զայրին բռնադատէին ի
8 քեզ ։ [17]Զսրբութիւնս իմ արհամարհէին
9 եւ զշաբաթս իմ պղծէին ի քեզ ։ Արք
աւազակք" կային ի միջի քում զի հե-
ղուցուն [4]ի քեզ արիւն. եւ ի վերայ լե-

[1] Եբր. խոյս [2] Եբր. Եւ եղիցի նոցա իբրեւ հմայութիւն սնոտի յաչս նոցա, որոց երդուեալ էր երդմունս նոցա. իսկ նա յիշեցուսցէ զանօրէնութիւնն զի ըմբռնեսցին [3] Եբր. Տէր Եհովայ [4] Եբր. [illegible] [5] Եբր. ըմբռնեսջիք ձեռամբ [6] Եբր. նորա [7] Եբր. [illegible] վախճան [8] Եբր. հիմն ի վեր, հիմն ի վեր, հիմն ի վեր [9] Եբր. որոյ են իրաւունք, եւ տաց զայն նմա [10] Եբր. մերկացեալ է ի սպանումն, սրբեալ է ի սպառումն, փոխանակ փայլական. (29) Մինչ տեսանեն քեզ սնոտիս, եւ հմայեն քեզ հմայս ստութեան, ածել զքեզ ի պարանոցս ամպարշտաց սպանանելեաց, որոց օրն հասեալ է, վախճան ժամանակի անօրէնութեան ։ (30) Դարձուցի՞ց զնա ի պատեան իւր. ի տեղւոջ ուր արարար, յերկրին ծննդեան քո [11] Եբր. բարբարոսաց, ճարտարաց ապականութեան [12] Եբր. ո՞չ դատեսցես, ո՞չ դատեսցես [13] Եբր. զի եկեսցէ ժամանակ նորա, և առնէ կուռս պղծել զանձն իւր ։ (4) Յարեան քում զոր հեղեր յանցեար, եւ ի կուռս քո զորս արարեր՝ [14] Եբր. եկիր մինչեւ յամս քո [15] Եբր. զքեզ, վատանունդ, լիդ աղմկաւ [16] Եբր. ըստ բազկի իւրում եղեւ ի քեզ ի հեղուլ զարիւն [17] Եբր. Զսրբութիւնս իմ արհամարհեցեր, եւ զշաբաթս իմ պղծեցեր ։ (9) Արք բանսարկուք

բանցս զոհէին ի քեզ, եւ գործս անօրէնս
10 գործէին ի միջի քում։ Զամօթ հօր յայտ-
նէին ի քեզ, եւ պղծութեամբ զպաշ-
11 տօնն լլկէին ի քեզ։ Եւ իւրաքանչիւր
զկին ընկերի իւրոյ պղծէին, եւ իւրա-
քանչիւր զնու իւր պղծէին ամպարշ-
տութեամբ, եւ իւրաքանչիւր զքոյր իւր,
12 զդուստր հօր իւրոյ լլկէին ի քեզ։ Կա-
շառս առնուին ի միջի քում զի հեղու-
ցուն արիւն, վաշխս եւ տոկոսիս [1]առ-
նուին ի միջի քում. եւ ածիր կատա-
րեցեր զվախճան չարեաց քոց ըստ բռնու-
թեան քում, քանզի՛ մոռացար զիս,
13 ասէ Տէր Տէր։ Արդ ահաւասիկ հարից ծափ
զծափս ի վերայ [2]գործոյն քոց զոր ա-
րարեր, եւ ի վերայ արեանցն գործելոց
14 ի միջի քում։ [3]Եւ եթէ ժուժկալեսցի
սիրտ քո, եթէ զօրասցին՝ ձեռք քո
յաւուրսն յորս ես արարից ընդ քեզ.
15 ես Տէր խօսեցայ, եւ արարից։ Եւ ցրուե-
ցից զքեզ ընդ ազգս, եւ ցանեցից զքեզ
ընդ գաւառս, եւ [4]պակասեսցէ պղծու-
16 թիւն քո ի քէն։ Եւ ժառանգեցից՝ ի
քեզ յանդիման ազգացն, եւ ծանիջիք
թէ ես եմ Տէր։
17 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
18 Որդի մարդոյ, ահաւասիկ եղեն ինձ տունդ
Իսրայելի [5]խառնակեալ, որպէս խառ-
նակեալ իցէ պղինձ եւ երկաթ եւ ա-
նագ եւ կապար եւ արծաթ ի հալոցի։
19 Վասն այնորիկ ասա," Այսպէս ասէ Տէր
Տէր. Փոխանակ զի եղերուք դուք ա-
մենեքեան [6]ի մի խառնակութիւն, վասն
այնորիկ ես ընկալայց՝ զձեզ ի մէջ Ե-
20 րուսաղեմի։ Որպէս [7]ընդունիցի ոք զար-
ծաթ եւ զպղինձ, զերկաթ եւ զկապար[8]
ի մէջ հալոցի՝ փչել ի նա հուր եւ ձու-
լել, նոյնպէս [9]ընկալայց զձեզ բարկու-
թեամբ իմով եւ [10]հաւաքեցից եւ ձու-
21 լեցից զձեզ։ Եւ փչեցից ի ձեզ՝ հրով
բարկութեամբ իմով. եւ ձուլեսջիք ի
22 մէջ նորա։ Զոր օրինակ ձուլեսցի ար-
ծաթ ի մէջ բովոյ, այնպէս ձուլեսջիք
ի միջի դորա, եւ ծանիջիք թէ ես Տէր
հեղի զբարկութիւն իմ ի վերայ ձեր։
23 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
24 Որդի մարդոյ, ասա ցդա, Դու այն եր-
կիր ես որ [11]ոչ թանաս՝, եւ ոչ եկն անձ-
րեւ ի վերայ քո յաւուր բարկութեան.
25 [12]Որոյ իշխանք իւր ի միջի իւրում իբ-
րեւ զառիւծունս գոչէին յափշտակել
զյափշտակութիւնս, ուտեն զանձինս
անիրաւ բռնութեամբ, եւ առնուն
պատիւս անիրաւութեամբ, եւ բազմա-
26 ցան այրիք ի միջի քում՝։ Եւ քահանայք
նորա անարգէին զօրէնս իմ եւ պղծէին
զսրբութիւնս իմ. եւ զսուրբն ի պղծոյն
ոչ ընտրէին, եւ զարատաւորն յանարատէ
անաւ ոչ զատուցանէին. եւ ի շաբաթուց
իմոց ծածկէին զաչս իւրեանց, եւ
[13]զշաբաթս իմ պղծէին՝ ի միջի նոցա։
27 Իշխանք նորա ի միջի նորա որպէս գայլք
յափշտակողք, յափշտակել յափշտակու-
թիւնս, հեղուլ զարիւն, կորուսանել
զանձինս, զի ագահութիւն յոյժ ստա-
28 ցին։ Եւ մարգարէք նորա [14]որ ծեփէին
զնոսա անկցին, որք՝ տեսանէին սնո-
տիս, ըղձանային նոցա ստութիւն եւ
ասէին, Այսպէս ասէ Ադոնայի Տէր, եւ
29 Տէրն չէր խօսեցեալ. [15]Զժողովուրդ
երկրին տառապեցուցանէին անիրաւու-
թեամբ, եւ յափշտակէին յափշտակու-
թիւնս. զաղքատ եւ զտնանկս բռնա-
դատէին, ընդ պանդխտին իրաւամբք
30 ոչ գնային։ Եւ խնդրեցի ի նոցանէ այր
մի որ [16]ուղիղ գնայցէ, եւ կայցէ ա-
ռաջի իմ մատղիւր ի ժամանակի բար-
կութեան՝ զի մի՛ ջնջեցից զնա, եւ ոչ
31 գտի։ Եւ հեղի ի վերայ նոցա զբարկու-
թիւն իմ. հրով բարկութեան իմոյ [17]կա-
տարել ի նոսա՝. ըստ ճանապարհաց նո-
ցա ետու ի գլուխս նոցա, ասէ Տէր Տէր։

ԳԼ. ԻԳ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, կանայք երկու էին,

[1]Օրին. առեր, եւ զրկէիր զընկերս քո բռնութեամբ, եւ [2]Օրին. զրկանաց [3]Օրին. Միթէ ժուժկալեսցի՞ սիրտ քո, միթէ զօրասցե՞ն [4]Օրին. պակասեցուցից զպղծութիւն քո ի քէն։ (16) Եւ պղծեսցիս [5]Օրին. ի կղկղանս. ամենեքին սոքա, պղինձ եւ անագ եւ երկաթ եւ կապար ի հալոցի, կղկղանք արծաթոյ եղեն։ (19) Վասն այնորիկ [6]Օրին. ի կղկղանս, վասն այնորիկ ահա ես ժողովեցից [7]Օրին. ժողովիցէ [8]Օրին. յաւելուն յաւելու, եւ զանագ [9]Օրին. ժողովեցից [10]Օրին. սրտմտութեամբ իմով. եւ արկից ի բով, եւ ձուլեցից զձեզ։ (21) Եւ հաւաքեցից զձեզ

[11]Օրին. չես սրբեալ [12]Օրին. Դաւաճանութիւն մարգարէից նորա ի միջի նորա. իբրեւ զառեւծ որ մռնչէ, յափշտակէ զյափշտակութիւն. ուտեն զանձինս, ճոխութիւն եւ փառս ընկալան. զայրիս նորա բազմացուցին ի միջի նորա։ [13]Օրին. պղծեցայ [14]Օրին. ծեփէին զնոսա կաւով, զի [15]Կամ, ժողովուրդ [16]Օրին. ածիցէ ցանկ եւ կացցէ ի խրամատս առաջի իմ փոխանակ երկրին, [17]Օրին. սպառեցի զնոսա

3 դստերք միոյ մօր. Եւ պոռնկեցան յԵ-
գիպտոս, ի մանկութեան [1]իւրեանց.
անդ անկան ստինք իւրեանց, անդ ար-
4 կան ի կուսութենէ իւրեանց"։ Անուն
դստերն երիցու Ոողա, եւ քեռ նորա
Ոողիբա. եւ եղեն ինձ եւ ծնան ուս-
տերս եւ դստերս, եւ անուն նոցա՝ ա-
նուն Շամրնի Ոողա, եւ Երուսաղեմի՝
Ոողիբա։
5 Եւ պոռնկեցաւ Ոողայն յինէն, եւ
արձակեաց զաչս իւր զհետ հոմանեաց
իւրոց, յԱսորեստանեայսն որ մերձ էին
6 առ նա, Զգեցեալ հիրս եւ կարմիրս,
յիշխանս եւ ի զօրագլուխս, յերիտա-
սարդս, յընտրեալս ամենեսին, ի սպա-
7 ռազէնս ի հեծեալս յերիվարս։ Եւ սա-
րածեաց զպոռնկութիւն առ նոսա, առ
ամենայն ընտրեալս որդիսն Ասորեստա-
նեայց, եւ առ ամենեսին զորոց չոգաւ
զկնի, ամենայն [2]խորհրդովք իւրովք, եւ"
8 պղծեցաւ։ Եւ զպոռնկութիւն իւր յերկրէն
Եգիպտացւոց ոչ եթող. զի ընդ [3]նոսա
պղծէր ի մանկութենէ իւրմէ, եւ նոքա
արկին զնա ի կուսութենէ", եւ հեղին
ի վերայ նորա զպոռնկութիւնս իւրեանց։
9 Վասն այսորիկ մատնեցի զնա ի ձեռս
հոմանեաց իւրոց, ի ձեռս որդւոցն Ա-
սորեստանեայց զորոց զհետ երթայր։
10 Նոքա յայտնեցին զխայտառակութիւն
նորա, զուստերս եւ զդստերս նորա ա-
ռին, եւ զնա սրով սպանին. եւ եղեւ
[4]խօսք կանանց, եւ խնդրեցին վրէժ ի
նմանէ ի դստերս իւր"։
11 Եւ ետես քոյր նորա Ոողիբա, եւ ա-
ռաւել զանցոյց զաշարձակութիւն ա-
պականութեան իւրոյ քան զնորայն, եւ
զպոռնկութիւն իւր քան զպոռնկութիւն
12 քեռ իւրոյ։ Զի չոգաւ զհետ որդւոցն
Ասորեստանեայց, իշխանաց եւ զօրա-
վարաց՝ որ մերձ էին առ նա, զգեցե-
լոց հանդերձս [5]ծիրանիս ոսնուականս,
սպառազինաց հեծելոց յերիվարս, երի-
13 տասարդաց ընտրելոց ամենեցուն։ Եւ
տեսի զի պղծեցաւ, մի ճանապարհ էր
14 երկոցունց։ Եւ յաւել ի պոռնկութիւնս
իւր. եւ ետես արս նկարեալս յորմս
պատկերս Քաղդէացւոց նկարեալս [6]գըր-
15 չաւ ի նկարու, Ածեալ պէսպէս" կա-
մարս ընդ մէջ իւրեանց, եւ խոյրս ներ-
կեալս ի գլուխս իւրեանց. [7]երեւմն երեւմն
հարկանէր յամենեցունց", ի նմանու-
թիւն որդւոյն Բաբելացւոց, յերկրին
16 Քաղդէացւոց՝ յաշխարհին [8]իւրեանց. Եւ
ակն եդ նոցա հայեցուածովք աչաց իւ-
րոց, եւ առաքեաց հրեշտակս առ նոսա
17 յերկիրն Քաղդէացւոց։ Եւ եկին առ նա
որդիքն Բաբելացւոց յանկողինս [9]օթի,
եւ պղծեցին զնա ի պոռնկութեան իւ-
րում. եւ պղծեցաւ ընդ նոսա, եւ յափ-
18 րացաւ անձն նորա ի նոցանէ։ Եւ յայտ-
նեաց զպոռնկութիւն իւր, եւ ստակեաց
զամօթ իւր։ Եւ մեկնեցաւ անձն իմ ի
նմանէ, որպէս եւ մեկնեցաւ անձն իմ
19 ի քեռէ նորա։ Եւ [10]յաճախեցեր զպոռն-
կութիւն քո՝ յիշեցուցանել զաւուրս
մանկութեան քո յորս պոռնկէիր յԵ-
20 գիպտոս. Եւ արձակեցեր զաչս քո առ
Քաղդէացիսն՝ յիշխանս եւ ի ձիան-
21 գամս։ Եւ այց արարից անօրէնութեան"
մանկութեան քո [11]զոր գործէիրն յերկ-
րին Եգիպտացւոց յօթեւանս քո, ուր
անկան ստինք քո եւ լուծաւ կուսու-
թիւն" քո։
22 Վասն այսորիկ, Ոողիբա, այսպէս ա-
սէ Տէր Տէր. Ահաւասիկ ես յարուցից
ի վերայ քո զհոմանիսն յորոց յափրա-
ցաւ անձն քո, եւ ածից պատեցից զնո-
23 սա զքեւ, Զորդիսն Բաբելացւոց եւ
զամենայն Քաղդէացիսն, զՓակուդ եւ
զՍուէ եւ զԿուէ, եւ զամենայն որդիսն
Ասորեստանեայց ընդ նոսա, զերիտա-
սարդս ընտիրս, զիշխանս, զզօրավարս,
[12]զսպառազէնս՝ զանուանիս զհեծեալս"
24 յերիվարս։ Ամենեքին եկեսցեն ի վերայ
քո [13]ի հիւսիսոյ. կառք եւ անիւք ազ-
գաց բազմութեան, սաղաւարտաւորք
`եւ վահանաւորք, [14]եւ արկցեն չուրջ
զքեւ պահ. եւ տաց առաջի երեսաց

[1] Ոմանք. իւրեանց պոռնկեցան. անդ ճմլեցան ստինք նոցա, եւ անդ շօշափեցին զպտկունս կուսութեան նոցա [2] Ոմանք. կամօք նոցա [3] Ոմանք. նմա ննջէին ի մանկութենէ նորա. եւ նոքա շօշափեցին զպտկունս կուսութեան նորա [4] Ոմանք. առակ ի կանայս, եւ արարին դատաստանս ի նմա [5] Ոմանք. դոյնոք

[6] Ոմանք. նօթիւ, (15) Ածեալ [7] Ոմանք. տեսլեամբ իշխանաց ամենեքին նոքա [8] Ոմանք. ծննդեան իւրեանց [9] Ոմանք. սիրոյ [10] Ոմանք. յաճախեաց զպոռնկութիւնս իւր, յիշել զաւուրս մանկութեան իւրոյ յորս պոռնկեցաւ յԵգիպտոս (20) Եւ հարաւ հոմանեաց նոցա, որոց մարմին՝ մարմին իշոց, և զօրութիւն ձիոց զօրութիւն նոցա։ (21) Եւ այց արարեր պղծութեան [11] Ոմանք. ի շօշափել Եգիպտացւոց զպտկունս քո, վասն ստեանց մանկութեան [12] Ոմանք. ամենեքին նոքա անուանիք՝ հեծեալք [13] Ոմանք. զինուք [14] Ոմանք. եւ ասպարաւորք

նոցա դատաստանս, եւ [1]խնդրեսցեն ի
քէն վրէժս" դատաստանօք իւրեանց։
25 Եւ տաց զնախանձ իմ ի քեզ, եւ ա-
րասցեն ընդ քեզ ըստ բարկութեան
[2]սրտմտութեան իմոյ". եւ զունչս եւ
զականջս քո կտրեսցեն, եւ զմնացորդս
քո սրով կոտորեսցեն, եւ զուստերս քո
եւ զդստերս քո առցեն, եւ զմնացորդս
26 քո հրով սատակեսցեն. Եւ մերկասցեն
ի քէն զհանդերձս քո, եւ առցեն զզարդ
27 պարծանաց քոց։ Եւ *դարձուցից զամ-
պարշտութիւնս քո ի քէն, եւ զպոռ-
նկութիւնս քո որ յերկրէն Եգիպտացւոց,
եւ ոչ ամբառնայցես զաչս քո [3]ի նոսա,
եւ ոչ եւս յիշեսցես զԵգիպտոս։
28 Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր Տէր.
Ահաւասիկ ես մատնեցից զքեզ ի ձեռս
ատելեաց քոց՝ յորոց յաւիրացաւ անձն
29 քո ի նոցանէն։ Եւ գնասցեն ընդ քեզ
ատելութեամբ, եւ առցեն զամենայն
վաստակս [4]քո եւ զերկս քո. եւ եղիցես"
մերկ եւ խայտառակեալ, եւ յայտնեսցի
ամօթ պոռնկութեան քո, եւ ամպարշ-
30 տութիւնն քո եւ պոռնկութիւն քո։ Ա-
րարից քեզ զայդ ի պոռնկելն քում
զհետ ազգաց, ուր պղծէիր [5]ի խորհուրդս
31 նոցա։ Ճանապարհս քեռ քո գնացեր,
եւ տաց զբաժակ նորա ի ձեռս քո։
32 Այսպէս ասէ Տէր Տէր. Զբաժակն քեռ
քո արբցես, զխորն եւ զլայն, եւ եղի-
ցես ի ծաղր եւ ի կատականս, [6]յաճա-
33 խել կատարել զարբեցութիւն, Եւ լցցիս
լքմամբ, զբաժակն ապականութեան,
34 զբաժակն" քեռ քո Շամրնի։ Արբցես
եւ քամեսցես. եւ [7]զհերս քո լաղեսցես",
եւ զամիսս քո կործեսցես. [2]եւ զտօնս
քո եւ զամսագլուխս քո դարձուցից ի
քէն." զի ես խօսեցայ՝ ասէ Ադոնայի
35 Տէր։ Վասն այդորիկ այսպէս ասէ Ա-
դոնայի Տէր. Փոխանակ զի մոռացար
զիս, եւ ընկեցեր զիս զկնի մարմնոյ
քո, եւ դու ընկալ զամպարշտութիւնս
քո եւ զպոռնկութիւնս քո։
36 Եւ ասէ ցիս Տէր, Որդի մարդոյ, ե-
թէ դատեսցե՞ս զՈղայն եւ զՈղիբայն.
եւ պատմեսցես նոցա զանօրէնութիւնս
37 իւրեանց։ Զի շնացան՝ եւ արիւն է ի
ձեռս նոցա, եւ [8]ի խորհուրդս նո-
ցա" շնային, եւ զորդիս իւրեանց զոր
38 ինձ ծնան՝ ածէին զբոցով[9]։ Մինչ ցայն-
չափ եւս արարին ինձ, զի զսրբութիւնս
իմ պղծէին ի նմին աւուր, եւ զշա-
39 բաթս իմ ապականէին։ Ի զոհել նոցա
զորդիս իւրեանց կռոցն իւրեանց, եւ
մտանէին ի նմին աւուր ի սրբութիւնս
իմ եւ պղծէին զնոսա, եւ այսպէս առ-
40 նէին ի մէջ տան իմոյ։ Զի եւ արանց
եկելոց ի հեռաստանէ, առ որս հրեշ-
տակս արձակէիր, իսկ եւ իսկ իբրեւ
գային՝ ի բաղանիս մտանէիր, ի ծարիր
եւ ի սնգոյր չպարէիր, եւ զարդարէիր
41 զարդու. Եւ նստէիր ի գահոյս զարդա-
րեալս, եւ սեղան յօրինեալ դնէիր ա-
ռաջի, եւ զխունկս իմ եւ զեւղն [10]առ-
42 նուիր եւ ուրախ լինէիր ընդ նոսա։ Եւ
ի ձայն արուեստականաց նուագէին".
եւ առ այն արամբք՝ այլ եւս բազմու-
թեան արանց զինեմոլաց [11]եկելոց յա-
նապատէ տայիր" ապարանջանս ի ձեռս
նոցա եւ պսակ պարծանաց ի գլուխս
43 նոցա։ Եւ ասացի [12]թէ մի՛ շնասցի ընդ
նոսա զգործ պոռնկութեան, եւ նա
44 պոռնկէր"։ Եւ մտանէին առ նա՝ որպէս
մտանիցեն առ կին պոռնիկ, նոյնպէս
մտանէին առ Ողայն եւ առ Ողիբայն՝
45 [13]գործել զանօրէնութիւն։ Եւ արք ար-
դարք էին նոքա, եւ" խնդրեսցեն վրէժս
ի նոցանէ, զվրէժ շնացելոց եւ զվրէժ
արեան. զի շնացօղք էին, եւ արիւն ի
ձեռս նոցա։
46 Զի այսպէս ասէ Տէր Տէր. [14]Ած ի վե-
րայ զօր, եւ տուր" զնոքօք խռովութիւն
47 եւ յափշտակութիւն։ Եւ քարաձիգ [15]լեր
ի նոսա քարամբք զօրաց, եւ խոցոտեա
զնոսա սրովք նոցա. ուստերք նոցա եւ
դստերք կոտորեսցին", եւ զտունս նոցա
48 հրձիգ արասցեն։ Եւ *դարձուցից զամ-
պարշտութիւնս յերկրէ, եւ խրատեսցին

[1] Եբր. դատեսցին զքեզ [2]Յեբր. պ—խ—ե *Եբր. դադարեցուցից [3] Եբր. ի նոսա [4] Եբր. քո, եւ թողցեն զքեզ [5] Եբր. ի կուռս [6] Եբր. բ—ծ—լ մեծ ի տանել. (33) Արբեցութեամբ եւ ցաւօք լցցիս. բաժակաւ ապշութեան եւ ամայութեան, բաժակաւ [7] Եբր. զխեցին լիզուցես

[8] Եբր. ի կուռս իւրեանց [9] Եբր—յեցէն յա—ել—, ի կերակուր նոցա [10] Եբր. դնէիր ի վերայ նորա։ (42) Եւ էր ձայն բազմութեան որ ուրախ լինէր ընդ նմա [11] Եբր. ածելոց յանապատէ, տային [12] Եբր. զպառաւեալն շնութեամբք. Արդ պոռնկեսցի՞ն եւ ընդ սմա [13] Եբր. կանայս պիղծս։ (45) Եւ արք արդարք, նոքա [14] Եբր Ածից ի վերայ նոցա զօրս եւ արկից [15] Եբր. լիցի զօրն ի նոսա քարամբք և խոցոտեսցեն զնոսա սրովք իւրեանց. զուստերս նոցա և զդստերս նոցա կոտորեսցեն

ամենայն կանայք, եւ մի՛ եւս արասցեն
49 ըստ ամպարշտութեան [1]նոցա։ Եւ տա-
ցի ամպարշտութիւն ձեր ի վերայ ձեր,
եւ [2]ըստ մեղաց խորհրդոց" ձերոց ըն-
կալջիք, եւ ծանիջիք թէ ես եմ Տէր Տէր։

## ԳԼ. ԻԴ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս յամին ին-
ներորդի, յամսեանն տասներորդի, որ
2 օր տասն էր ամսոյն, եւ ասէ. Որդի
մարդոյ, գրեա դու քեզ [3]զնչան աւուրն՝
յորմէհետէ" եհաս արքայն Բաբելաց-
3 ւոց ի վերայ [4]Երուսաղեմի։ Ցոյց
յայնմանէ" առակեսցես տանն դառնացո-
ղաց պտտակս զայս, եւ ասասցես ցնո-
սա, Այսպէս ասէ Տէր Տէր. Կառո զկաթ-
սայդ, կառո, եւ արկցես ի դմա ջուր։
4 Եւ դիցես զանդամաթիւդ, զամենայն
յօշուած դեղեցիկ, զազդր եւ զերի.
5 [5]քանցեալ յոսկերաց, Առեալ յընտիր
ընտիր անասնոց, եւ զոսկերսն ի ներ-
քոյ կաթսային այրեսջիք. եռաց, զե-
ղաւ, քաջ եռաց, եփեցան" ոսկերքն ի
միջի նորա։
6 Վասն այնորիկ այսպէս ասէ Ադոնայի
Տէր. Ո՛վ քաղաք արեանց, կաթսայ լի
ժանգով, եւ ժանգն ի նմանէ ոչ պար-
զեցաւ. անդամ անդամ [6]եհան ի նմա-
նէ", եւ վիճակ ոչ անկաւ ի վերայ նո-
7 րա. Զի արիւն նորա ի միջի նորա է.
ի սալաքարի վերայ [7]եդի զնա, եւ ոչ հե-
ղի" զնա յերկիր ծածկել զնա հողով։
8 Մինչեւ ելցէ սրտմտութիւն իմ ի վրէժ-
խնդրութիւն պահանջել զվրէժս, ետու
զարիւն նորա ի վերայ սալաքարին զի մի՛
9 ծածկեսցի։ Վասն այդորիկ այսպէս ասէ
Ադոնայի Տէր. Վա՜յ քաղաք արեանց.
10 եւ ես [8]զփայտն յաճախեցից, Եւ զխան-
ձողն բազմացուցից. եւ հուր բորբո-
քեցից զի միսն հալեսցի եւ արգանակն
11 նուազեսցի" եւ ոսկերքն փխրեսցին. Եւ
[9]կացցէ ի վերայ կայծականց իւրոց.
բորբոքեսցի զի վառեսցի, ջեռցի եւ
պղինձ նորա հալեսցի, եւ ի միջի նորա
պղծութիւն նորա." եւ պակասեսցի
12 ժանգ նորա. [10]Եւ նուազեսցի ժանգ նո-
րա, եւ մի՛ ելցէ" ի միջոյ նորա բազում
ժանգ նորա, [11]եւ յամօթ լիցի ժանգ նո-
13 րա պղծութեամբ արգանակին. Փոխա-
նակ զի պղծէիր դու, եւ ոչ սրբեցիր
ի պղծութենէ քումմէ. եւ զի՞նչ իցէ ե-
թէ ոչ սրբեսցի տակաւին, մինչեւ կա-
14 տարեցից զսրտմտութիւն իմ ի նմա"։ Ես
Տէր խօսեցայ. եւ եկեսցէ, եւ արարից
եւ ոչ խորշեցայց, եւ ոչ ողորմեցայց,
եւ ոչ [12]մխիթարեցայց. այլ ըստ ճանա-
պարհաց քոց եւ ըստ գնացից քոց [13]դա-
տեցայց զքեզ", ասէ Ադոնայի Տէր։
[14]Վասն այդորիկ ես դատեցայց զքեզ ըստ
արեանց քոց, եւ ըստ խորհրդոց քոց
դատեցայց զքեզ, պիղծ եւ անուա-
նի, որ յաճախեցեր ի դառնութիւնս։"
15 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
16 Որդի մարդոյ, Ահաւասիկ ես բառնամ
ի քէն զցանկալին աչաց քոց [15]պատե-
րազմաւ, եւ ոչ կոծեսցիս եւ ոչ լայ-
ցես, եւ ոչ եկեսցէ արտօսր ի քէն։
17 [16]Զի հեծութիւն արեան միջոյ եւ սգոյ
է, եւ ոչ հիւսցին զէսք քո, եւ կօշիկք
քո ացցեն յոտս քո. եւ մի՛ մխիթա-
րեսցիս ի շրթանց նոցա", եւ զհաց ա-
րանց մի՛ կերիցես։
18 Եւ խօսեցայ ընդ ժողովրդեանն ընդ
առաւօտս, [14]որպէս հրամայեաց ինձ Տէր,"
եւ մեռաւ կինն իմ յերեկորեայ, եւ ա-
րարի ընդ առաւօտն որպէս հրամայեցաւ
19 ինձ։ Եւ ասէ ցիս ժողովուրդն, Ո՞չ պատ-
մես մեզ զի՞նչ է այդ զոր գործես։
20 Եւ ասեմ ցնոսա, Բան Տեառն եղեւ
21 առ իս եւ ասէ, Ասա ցտունդ Իսրայե-
լի, Այսպէս ասէ Տէր Տէր. Ահաւադիկ
ես պղծեցից զսրբութիւնս իմ, զհպար-
տութիւն զօրութեան ձերոյ, զցանկա-
լիս աչաց ձերոց, եւ յորս խնայեն ան-
ձինք ձեր. ուստերքն ձեր եւ դստերք

[1] Ոմն. ձերում [2] Ոմն. զմեղս կամաց [3] Ոմն. զա-
նուն աւուրն. զնոյն իսկ օրն. [4] Ոմն. Երուսա-
ղեմի, զնոյն իսկ օրն։ (3) Եւ [5] Ոմն. լից ընտիր
ընտիր ոսկերօք ։(5) Առցես զընտիրս խաշանցն, և
այրեսցես զոսկերսն ի ներքոյ. եռացո զնա քաջ,
և եփեսցին [6] Ոմն. հան [7] Ոմն. եդ զնա, և ոչ
հեղ [8] Ոմն. զփայտն յաճախեցից։ (10) Բազ-
մացո զխանձողն, բորբոքեա զհուրն, զի միսն
հալեսցի. համեմեա համեմօք [9] Ոմն. կացո ի վե-
րայ կայծականց զկաթսայն, զի վառեսցի. ջեռցի
պղինձ նորա, և հալեսցի պղծութիւնն որ ի նմա

[10] Ոմն. Նեղութեամբք տառապեցայց, եւ ոչ ել
[11] Ոմն. հրով ժանգ նորա։ (13) Ի պղծութեան
քում գոյ լկտութիւն, զի ես սրբեցի զքեզ, եւ
դու ոչ սրբեցար. ի պղծութենէ քումմէ մի՛
եւս սրբեսցիս, մինչեւ հանգուցից զսրտմտու-
թիւն իմ ի քեզ [12] Ոմն. զղջացայց [13] Ոմն.
դատեսցիս [14] Ոմն. դ—է—ն [15] Ոմն.
հարուածով [16] Ոմն. Հեծեծջիր լռութեամբ.
մի՛ առնիցես կոծ մեռելոց, առ զապարօշ քո
զգլխով քով, արկ զհողաթափս քո յոտս քո.
մի՛ պատեսցես զշրթունս քո

ձեր որ ի ձէնջ մնացեալ են՝ ի սուր անկ-
22 ցեն ։ Եւ արասջիք նոյնպէս որպէս ես
արարի . [1]ի բերանոց նոցա մի՛ մխիթա-
րեսջիք՝, եւ զհաց արանց ոչ ուտիցէք ։
23 Եւ [2]վարսք ձեր ի վերայ գլխոց ձերոց,
եւ կօշիկք ձեր յոտս ձեր . ոչ կոծիցիք
եւ ոչ լայցէք, եւ հաշեսջիք յանիրաւ-
ութիւնս ձեր, եւ [3]ոչ մխիթարեսցէ
24 իւրաքանչիւր ոք զեղբայր իւր՝ ։ Եւ ե-
ղիցի ձեզ Եզեկիէլ ի նշան . ըստ ամե-
նայնի զոր ինչ արար, արասջիք . յոր-
ժամ հասանիցէ այդ եւ ծանիջիք թէ
ես եմ Ադոնայի Տէր ։
25 Եւ դու, որդի մարդոյ, ո՞չ ապաքէն
յաւուր յայնմիկ յորժամ բարձից ի նո-
ցանէ զզօրութիւն նոցա եւ [4]զհպար-
տութիւն պարծանաց նոցա, եւ զցան-
կալին աչաց նոցա եւ զհպարտութիւն
անձանց նոցա, զուստերս եւ զդստերս
26 նոցա, Յաւուր յայնմիկ գայցէ ապրեալն
27 առ քեզ՝ տալ գոյժ յականջս քո ։ Յա-
ւուր յայնմիկ բացցի բերան քո առ ապ-
րեալն, խօսեսցիս եւ մի՛ եւս համրա-
ցիս . եւ եղիցիս նոցա ի նշան, եւ ծա-
նիցեն եթէ ես եմ Տէր ։

## ԳԼ. ԻԵ

[5]Ի վերայ որդւոցն Ամոնայ ։՝

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, հաստատեա զերեսս քո
ի վերայ որդւոցն Ամոնայ եւ մարգա-
3 րեաց ի վերայ նոցա . Եւ ասասցես ցոր-
դիսն Ամոնայ, Լուարուք զպատգամս
Ադոնայի Տեառն . այսպէս ասէ Ադո-
նայի Տէր . Փոխանակ զի ցանհար ե-
ղերուք ի վերայ սրբութեանց իմոց որ
պղծեցան . եւ ի վերայ երկրին Իսրայելի
որ ապականեցաւ, եւ ի վերայ տանն Յու-
4 դայ որ գնաց ի գերութիւն, Վասն այնո-
րիկ ահաւասիկ ես մատնեմ զձեզ որդւոյն
[6]կեդեմայ ի ժառանգութիւն, եւ [7]բնա-
կեսցեն մեզօքն՝ իւրեանց ի քեզ, եւ
կանգնեսցեն զխորանս իւրեանց ի քեզ .
նոքա կերիցեն զպտուղ քո, եւ նոքա
5 արբցեն [8]զպարարտութիւն քո ։ Եւ տաց
զքաղաքն Ամոնացւոց՝ յարօտս ուղ-
տուց, եւ զորդիսն Ամոնայ յարօտս

[1] Ոմն. զլրթունս մի՛ պատեսջիք [2] Ոմն. ապարօշք
[3] Ոմն. հեծեսջիք այր ընդ եղբօր իւրում [4] Ոմն. զուրախութիւն [5] Յոմն. պակասէ [6] Այլքն՝ արեւելից [7] Ոմն. դիցեն զբնակութիւնս [8] Ոմն զկաթն քո։ (5) Եւ տաց զՌաբաթ

հօտից, եւ ծանիջիք թէ ես եմ Տէր ։
6 Զի այսպէս ասէ Տէր Տէր . Փոխանակ
զի կայթեցեր դու ձեռամբ քով, եւ դո-
փեցեր ոտամբ քով, եւ ուրախ [9]եղեր
անձամբ քով ի վերայ երկրին Իսրայե-
7 լի, Վասն այնորիկ ահաւասիկ ես ձգե-
ցից զձեռն իմ ի վերայ քո, եւ տաց
զքեզ ի յափշտակութիւն ի մէջ ազգաց,
եւ սատակեցից զքեզ ի ժողովրդոց, եւ
կորուսից զքեզ ի գաւառաց կորստեամբ,
եւ ծանիցես թէ ես եմ Տէր ։
8 [5]Ի վերայ Մովաբու ։՝ Այսպէս ասէ
Ադոնայի Տէր . Փոխանակ զի ասացին
Մովաբ եւ Սէիր, թէ Ահա որպէս ա-
մենայն ազգք են՝ նոյնպէս եւ տունն
9 [5]Իսրայելի եւ՝ Յուդայ, Վասն այդորիկ
ահաւասիկ ես [10]քակեցից զթիկունս Մո-
վաբու ի բարձրաւանդակաց քաղաքաց
իւրոց, զընտիր ընտիր երկիրն՝ զտունն
Բեթայ եւ զԱսիմովթայ, ի վերոյ քան
զաղբեւր քաղաքին առ ծովեզերբն,
10 Զորդիսն Կեդեմայ ի վերայ՝ որդւոցն Ա-
մոնայ, եւ տաց նմա ի ժառանգութիւն .
զի մի՛ եղիցի յիշատակ որդւոցն Ամո-
11 նայ ի մէջ ազգաց ։ Եւ ի Մովաբայ վրէժ
խնդրեցից, եւ ծանիցեն թէ ես եմ Տէր ։
12 [5]Ի վերայ Եդովմայ։՝ Այսպէս ասէ Ա-
դոնայի Տէր . Փոխանակ զի խնդրեաց
վրէժ Եդովմ ի տանէն Յուդայ, եւ [11]ո-
խակալ եղեն եւ պահանջեցին վրէժս՝,
13 Վասն այդորիկ այսպէս ասէ Ադոնայի
Տէր . Ձգեցից զձեռն իմ ի վերայ Եդով-
մայ, եւ սատակեցից ի նմանէ զմարդ
եւ զանասուն, եւ եդից զնա անա-
պատ . [12]եւ հալածեալք ի Թեմանայ՝
14 անկցին ի սուր ։ Եւ խնդրեցից վրէժս
յԵդովմայ ի ձեռն ժողովրդեան իմոյ Իս-
րայելի, եւ արասցեն ընդ Եդովմ ըստ
բարկութեան սրտմտութեան իմոյ . եւ
ծանիցեն զվրէժխնդրութիւն իմ, ասէ
Ադոնայի Տէր ։
15 [5]Ի վերայ Փղշտացւոցն ։ Վասն այդո-
րիկ՝ այսպէս ասէ Ադոնայի Տէր . Փո-
խանակ զի ոխակալ եղեն [13]այլազգիքն,
եւ յարուցին վրէժխնդրութիւն սրտի

[9] Ոմն. եղեր յամենայն անարգանս քո [10] Ոմն. բացից զթիկունս Մովաբու, ի քաղաքաց, ի քաղաքաց որ ի ծագս նորա, զվայելչութիւն երկրին զԲեթեսիմովթ, զԲեեղմովն եւ զԿարիաթեմ, (10) Առ որդիսն Արեւելից, ընդդէմ [11] Ոմն. յանցանելով յանցեան յառնուլ վրէժ ի նոցանէ [12] Ոմն. ի Թեմանայ . և մինչեւ ի Դեդան [13] Իմա. Փղշտացիք, այլազգիս և է Ներգոյ

մտօք յամենայնութիւն՝ սատակել մին-
16 չեւ յաւիտեան, Վասն այնորիկ այսպէս
ասէ Ադոնայի Տէր. Ահաւասիկ ես
ձգեցից զձեռն իմ ի վերայ այլազգեացդ,
եւ սատակեցից [1]զԿրետացիսդ, եւ կո-
17 րուսից զմնացորդս ծովեզերեայցդ. Եւ
խնդրեցից ի նոցանէ վրէժս մեծամեծս
կշտամբութեամբ եւ բարկութեամբ, եւ
ծանիցեն թէ ես եմ Ադոնայի Տէր, ի
պահանջել զվրէժխնդրութիւն իմ ի նո-
ցանէ։

## ԳԼ. ԻԶ

[2]Ի վերայ Ծուրայ։"

1 Եւ եղեւ յամին մետասաներորդի որ օր
մի էր ամսոյն, եղեւ բան Տեառն առ
2 իս եւ ասէ, Որդի մարդոյ, փոխանակ
զի ասնհար եղեւ Ծուր ի վերայ Երու-
սաղեմի, եւ ասէ, Վաշ վաշ, զի բեկաւ
[3]կործեաւ, առ իս դարձցին ազգքն, ո-
3 րովհետեւ լին աւերեցաւ", Վասն այ-
սորիկ այսպէս ասէ Ադոնայի Տէր. Ա-
հաւասիկ ես ի վերայ քո, Ծուր, եւ
հանից ի վերայ քո ազգս բազումս, որ-
4 պէս ելանէ ծովդ ալեօք իւրովք։ Եւ
կործանեսցեն զպարիսպս Ծուրայ, եւ
կործանեսցեն զաշտարակս նորա. եւ
հոսեցից զհող նորա ի նմանէ, եւ արա-
5 րից զնա յապառաժ. Եւ ձգանք ուռ-
կանաց եղիցին ի մէջ ծովուն, զի ես
խօսեցայ, ասէ Տէր Տէր. եւ եղիցի յա-
6 ւար ազգացն. Եւ դստերք նորա ի դաշ-
տի սրով սպանցին, եւ ծանիցեն զի ես
եմ Տէր։
7 Զի այսպէս ասէ Ադոնայի Տէր. Ա-
հաւասիկ ես ածից ի վերայ քո, Ծուր,
զՆաբուքոդոնոսոր արքայ Բաբելացւոց
ի հիւսիսոյ, որ է արքայ արքայից. կա-
ռօք եւ երիվարօք, գունդագունդ հե-
8 ծելովք ազգաց բազմաց յոյժ։ Նա զդստերս
քո ի դաշտին սրով կոտորեսցէ, եւ զքեւ
շուրջ պահ դիցէ, եւ փոս փորեսցէ, եւ
[4]պատնէշ կանգնեսցէ եւ ամրութիւն
9 զինուց. Եւ զգեղարդունս իւր յանդի-
ման քո կանգնեսցէ, եւ զպարիսպ քո"
եւ զաշտարակս կործանեսցէ սրով իւ-
10 րով։ Եւ ի բազմութենէ հեծելոց նորա
ծածկեսցէ զքեզ փոշի նոցա, ի ձայնէ
հեծելոց եւ յանուոյ կառաց նոցա շար-
ժեսցին պարիսպք քո ի մտանելն նորա
ի դրունս քո, որպէս որ մտանիցէ [5]ի
11 դաշտ ի քաղաք"։ Սմբակօք երիվարաց
իւրեանց կոխեսցեն զհրապարակս քո,
եւ զազգդ քո սրով կոտորեսցէ, եւ
զհաստատութիւն զօրութեան քո յերկիր
12 կործանեսցէ։ Եւ աւար առցէ զզօրու-
թիւնս քո, եւ կողոպտեսցէ զինչս քո, եւ
կործանեսցէ զպարիսպս քո, եւ զցան-
կալի ապարանս քո տապալեսցէ, եւ
զքարինս եւ զփայտս եւ զհողն ի ծովն
13 ամասցէ։ Եւ [6]քակտեսցէ զբազմութիւն
արուեստականաց քոց, եւ ձայն երգոց
14 մի եւս լուիցի ի քեզ։ Եւ արարից զքեզ
յապառաժ, եւ եղիցիս ի ձգանս ուռ-
կանաց. եւ մի եւս շինեսցիս, զի ես
խօսեցայ, ասէ Ադոնայի Տէր։
15 Զի այսպէս ասէ Տէր Տէր ցԾուր. Ո՞չ
ապաքէն ի ձայնէ կործանման քո, ի
հեծելոյ վիրաւորաց քոց, ի մերկանա-
լոյ սրոյ ի միջի քում, շարժեսցին կղզիք
16 [2]քո։ Եւ իջցեն յաթոռոց իւրեանց ամե-
նայն իշխանք [7]ազգաց ծովուց, եւ վե-
րացուսցեն զխոյրս իւրեանց ի գլխոց"
իւրեանց, եւ զպէսպէս հանդերձս իւրեանց
մերկասցին, [8]տագնապելով տագնա-
պեսցին. յերկիր կործանեսցին, եւ զար-
հուրեսցին ի կորստեան իւրեանց, եւ
17 յոգւոց հանցեն" ի վերայ քո. Ողբս առ-
ցեն ի վերայ քո եւ ասասցեն, Զիա՞րդ
կորեար, քակտեցար ի մէջ ծովու, քա-
ղաքդ հոյակապ, որ եղեր զօրացեալ ի
մէջ ծովու՝ դու եւ բնակիչ քո, որ
զարհուրեցուցանէիր զամենայն բնակիչս
18 [9]քո. Եւ" երկիցեն կղզիք յօրէ կործան-
ման քո, եւ խռովեսցին կղզիք ծովուց
ի քերքելոյն քումմէ։
19 Զի այսպէս ասէ Տէր Տէր. Յորժամ
տաց զքեզ քաղաքդ աւերակ՝ իբրեւ
զքաղաքս որ բնաւ չիցեն բնակեալ, ի
հանել ինձ ի վերայ քո զանդունդս, եւ
20 ծածկեսցեն զքեզ ջուրք բազումք. Եւ
իջուցից զքեզ առ իջեալսն ի խորխո-
րատ, առ ժողովն յաւիտենից. եւ բնա-

---

[1] Եբր. զՔերեթիս [2] Յեբր. դ—լ—ւէ [3] Եբր. կորեաւ դուռն ազգաց. առ. իս դարձաւ. ես լցայց, նա կործանեցաւ [4] Եբր. կանգնեսցէ ընդդէմ քո ապար. (9) Եւ զկազմած մեքենայից իւրոց դիցէ ընդդէմ պարսպաց քոց.

[5] Եբր. իբրեւ զմուտ քաղաքի խրամատելոյ [6] Եբր. դադարեցուցից [7] Եբր. ծովուց, և հանցեն զպատմուճանս [8] Եբր. զգեցցին զերկեւղ, նստցին ի գետնի, և զարհուրեսցին հանապազ, և զարմասցին [9] Եբր. նորա։ (18) Արդ

կեցուցից զքեզ ի խորս երկրի, [1]իբրեւ
զաւերակսն՝՝ յաւիտենից, ընդ իջելսն
[2]յաւիտենից ի խորխորատ. զի մի եւս
բնակեսցիս, [3]եւ մի կանգնեսցիս յեր-
21 կիր կենաց. Ի կորուստ մատնեցից զքեզ՝՝,
եւ ոչ եւս լիցիս. եւ խնդրեսցիս, եւ ոչ
գտանիցիս յաւիտեան[4]։

## ԳԼ. ԻԷ

[2]Ողբք ի վերայ Ծուրայ։՝՝

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, ողբս առ ի վերայ Ծու-
3 րայ. Եւ ասասցես ցԾուր, Որ բնակեալդ
ես ի մուտս ծովուդ՝ վաճառաշահ ազ-
գաց ի կղզեաց բազմաց, այսպէս ասէ
4 Տէր [5]Տէր ցԾուր. Դու ասէիր, Ես զար-
դարեցի զիս ի զարդ գեղոյ իմոյ՝ ի սիրտ
ծովու Բէէլիմայ. որդիքն քո զարդարեցին
5 զքեզ։ Մայրք ի Սանիր լեռնէ շինեցան քեզ
պահանգք, եւ տախտակք նոճիք ի Լի-
բանանէ առան՝ առնել քեզ կայմս ե-
6 ղեւնափայտեայս։ Ի Բասանէ արարին
զթիակս նաւաց քոց, եւ զմեհեանս քո
շինեցին ի փղոսկրէից, ապարանս ան-
տառախիտս ի կղզեաց Քետիմացւոց։
7 Բեհեզ ընդ դիպակի գործեալ քեզ ի
պաստառս յԵգիպտոսէ՝ արկանելիք քեզ
ի փառս, եւ հանդերձ ծիրանի եւ կա-
պուտակ ի կղզեացն յԵղիմացւոց եղեն
8 ի զարդ պաճուճանաց քոց։ Եւ իշխանք
քո բնակիչք Սիդոնացւոց. եւ եղեն
Արադացիք՝՝ նաւավարք քո. եւ իմաս-
տունք քո, Ծուր, որ եղեն ի քեզ, նո-
9 քա եղեն քեզ նաւապետք։ Եւ ծերքն
[6]մատենագէտք եւ իմաստունք նորա՝
որ էին ի քեզ, նոքա [7]զօրացուցանէին
զխորհուրդս՝՝ քո. եւ ամենայն նաւք ծո-
վուն եւ նաւավարք նոցա եղեն [8]քեզ
10 երթալ յարեւմուտս արեւմտից։ Լիդա-
ցիք եւ Լիբէացիք՝՝ թիկունք զօրու-
թեան քո՝ այք ընտիրք պատերազ-
մօղք. որ կախեցին զվահանս եւ զսա-
ղաւարտս իւրեանց ի քեզ, եւ նոքա
11 փառաւորեցին զքեզ։ Որդիքն Արուա-
դացւոց [9]զօրութեամբք իւրեանց՝՝ զպա-
րըսպօք քով պատեալ կային, եւ [10]պա-
հէին զաշտարակս քո. զկապարճս՝՝ իւր-
եանց կախեցին շուրջանակի ի պարիսպս
քո, եւ նոքա իսկ բովանդակեցին զգե-
ղեցկութիւն քո։
12 [11]Կարքեդոնացիք վաճառականք քո ի
բազմութենէ ամենայն զօրութեան քո,
զարծաթ եւ զոսկի եւ զպղինձ եւ՝՝ զեր-
կաթ եւ զանագ եւ զկապար ետուն ի
13 վաճառս քո. [12]Յոյնք եւ ամենայն որ
շուրջ զնովաւ՝՝ էին մարդավաճառք քո,
եւ անօթս պղնձիս ետուն ի վաճառս
14 քո։ Եւ ի տանէ Թորգոմայ ձիովք եւ
հեծելովք եւ ջորւովք լցին զվաճառս
15 քո։ Որդիք [13]Հռոդացւոց վաճառականք
քո. [14]յաճախեցին ի կղզեաց զվաճառս
քո ժանեօք փղոսկրէիւք, եւ երթեւե-
16 կացն մարդիկ տայիր ի գինս։ Եւ վա-
ճառք քո բազմացեալք յաղխամաղխէ
քումմէ, յԱփիկեայ ստաշխն, եւ երփն
երփն նարօտուց ի Թարշշայ. եւ Հռա-
մոյթ եւ Կորքորդ լցին զվաճառս քո։
17 Հրէաստան եւ որդիքն՝՝ Իսրայելի վա-
ճառականք քո [15]ցորենով եւ խնկովք եւ
կասիաւ եւ ընտիր ընտիր՝՝ մեղու եւ
իւղով եւ ռետամբ լցին զաղխամաղ-
18 խեայ վաճառաց քոց։ Դամասկոս վա-
ճառականք քո, [16]եւ բազմաղխի եւ ի

[1]Եբր. յաւերակս [2]ՅԵբր. պակասէ [3]Եբր. յորժամ հաստատեցից փառս յերկրին կենդանեաց։ (21) Աւարից զքեզ յերկեղ [4]Եբր. յաւելու, ասէ Տէր Եհովայ [5]Եբր. Եհովայ, Ծուր, դու ասէիր, Ես եմ կատարումն գեղեցկութեան։ (4) Ի սիրտ ծովու են սահմանք քո. շինողք քո գործեցին կատարեալ զգեղ քո։ (5) Մայրիւք ի Սանիր լեռնէ շինեցին զամենայն տախտակամածս քո. Նաճի ի Լիբանանէ բերին առնել կայմս ի վերայ քո։ (6) Ի կաղնեաց Բասանու արարին զթիակս քո. զբազմոցս քո արարին ի փղոսկրէ, դրուագեալ ի տօսախէ ի կղզեաց Կիտացւոց։ (7) Ի բեհեզոյ ասեղնագործաց Եգիպտոսի եղեւ առագաստ քո, լինել քեզ ի նշան. ի կապուտակէ և ի ծիրանւոյ ի կղզեաց Եղիսայ եղեւ ծածկոց քո։ (8) Բնակիչք Սիդոնի և Արուադայ եղեն [6]Եբր. Գեբաղայ

[7]Եբր. նորոգիչք խորտակման [8]Եբր. ի քեզ առնել զտուրեւառ։ (10) Պարսք և Ղուդացիք և Փուդացիք եղեն [9]Եբր. ընդ զօրս քո [10]Եբր. Գամադացիք (կամ, քաջք) յաշտարակս քո եղեն. զասպարս [11]Եբր. Թարսիս վաճառական քո. ի բազմութենէ ամենայն վաճառաց. զարծաթ, [12]Եբր. Յաւան, Թոբաղ և Մոսոք, նորին [13]Եբր. Դեդանայ [14]Եբր. տուրեւառ կղզեաց բազմաց ի ձեռս քո. ժանիս փղաց և եբենոս բերէին քեզ ի հարկ, (կամ, ի վաճառ)։ (16) Արամ վաճառական քոյ յաճախութեան ձեռագործաց քոց. կարկեհան, ծիրանի, և երփն երփն նարօտուց. և բեհեզ և կորալիոն և յակինթ տային փոխանակ վաճառաց քոց։ (17) Հրէաստան եւ երկիրն [15]Եբր. ցորենով Մեննիթայ և քաքարու, և [16]Եբր. առ յաճախութեան ձեռագործաց քոց ի բազմութենէ ամենայն մեծութեան,

թագուոր զօրութենէ քումմէ, գինի ի
19 Քեղբոնեայ եւ ասր ի Միլետեայ։ Դան
եւ Յաւան ի Մէովզելայ բերէին քեզ
գինի ի վաճառս քո. յԱսեղայ երկաթ
գործեալ անիւս պատերազմի ի վաճառս
20 քո։ Դեդանացիք վաճառականք քո ա-
ծէին կառս ընտիրս ջորւովք հանդերձ՚՚
21 Արաբացիք եւ ամենայն իշխանք Կեդա-
րու, նոքա վաճառականք ընդ ձեռամբ
քով՝ [1]ուղտս եւ խոյս եւ [2]որոջս վա-
22 ճառէին ի քեզ։ Սաբա եւ Հռեգմա, եւ
նոքա վաճառականք քո, [3]եւղս անու-
շունս եւ՚՚ ականս պատուականս եւ ոս-
23 կի եսուն ի վաճառս քո։ Խառան եւ
[4]Քանան եւ Դադան, եւ նոքա վաճա-
ռականք քո, Սաբա եւ Ասուր եւ Քաղ-
24 ման վաճառականք քո, Որք բերին քեզ
վաճառս ընդ Մաքղիմ եւ ընդ Գաղիմ,
հիր եւ կարմիր եւ կապուտակ եւ երփն
երփն նարօտուց եւ գանձս ընտիրս
25 վանդակեալս չուանօք. Ի նաւս նոճի՝
որովք էր վաճառն քո, նաւք ի բազ-
մութեան վաճառաց քոց, եւ ի յաճա-
խութենէ աղխամաղխի քո, լցար ծան-
26 րացար յոյժ։ Ի սիրտ ծովու ի ջուրս
բազումս վարեցին զքեզ նաւավարք քո.
հողմ հարաւոյ խորտակեաց զքեզ ի սիրտ
27 ծովու։ Եւ զօրութիւն քո, եւ վարձք
քո եւ խառնաղանջիւն քոց, եւ նաւա-
վարք քո եւ նաւապետք քո, եւ խոր-
հրրդականք քո եւ խառնաղանջք խառ-
նաղանջից քոց՚՚, եւ ամենայն արք պա-
տերազմողք քո որ ի քեզ, եւ ամենայն
ժողովք որ ի միջի քում՝ անկցին ի սիրտ
28 ծովու յաւուր կործանման քո։ Ի ձայ-
նէ բարբառոյ [5]քո նաւավարք քո եր-
29 կիւղիւ զարհուրեսցին՚՚, Եւ իջցեն ի նա-
ւաց իւրեանց ամենայն [6]նաւավարք քո
եւ նաւամուտք քո առաջապահք նա-
30 ւաց յափն ծովուն կացցեն. Եւ աղա-
ղակեսցեն ի վերայ քո, եւ փոխեսցեն
զձայնս իւրեանց.՚՚ զուժեսցեն դառնա-
պէս, հող ի գլուխ լիցին, ընդ մոխիր
31 թաւալեսցին. Գերծցեն զգլուխս[7] ի
կնդութիւն, եւ քրձազգածք լիցին, եւ
լացցեն ի վերայ քո դառնացեալ սրտիւք.
32 կոծ դառնութեան։ [8]Առցեն որդիք նո-
ցա ի վերայ քո, ողբս առցեն եւ ող-
բասցեն՚՚, Ո՞վ էր իբրեւ զԾուր որ լռեաց
33 դադարեաց ի մէջ ծովուն։ [9]Որչափ ինչ
գտեր քեզ վարձս ի ծովէ այտի, լցու-
ցեր զազգս ի բազմութենէ քումմէ.՚՚ եւ
յաղխամաղխէ վաճառաց քոց մեծացու-
34 ցեր [10]զամենայն թագաւորս երկրի։ Արդ
բեկար ի ծովուդ՚՚ ի խորս ջուրց, վա-
ճառք քո եւ ամենայն ժողովք քո ի
միջի քում անկան [11]ամենայն նաւավարք
35 քո՚՚։ Ամենայն բնակիչք կղզեաց տրտմե-
ցան ի վերայ քո, եւ թագաւորք նոցա
զարհուրելով զարհուրեցան, [12]եւ հեղին
արտասուս զերեսօք իւրեանց ի վերայ
36 քո՚՚։ Վաճառականք ազգաց շչեցին ի
վերայ քո. [13]ի կորուստ մատնեցար՚՚, եւ
այլ ոչ եւս իցես յաւիտեան [11]ասէ Տէր
Աստուած՚՚։

## ԳԼ. ԻԸ

[11]Ի վերայ իշխանին Ծուրայ՚՚

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Եւ դու որդի մարդոյ, ասա ցիշխանն
Ծուրայ, Այսպէս ասէ Տէր Տէր. Փո-
խանակ զի հպարտացաւ սիրտ քո, եւ
ասացեր՝ թէ Աստուած եմ ես, եւ զբնա-
կութիւն Աստուծոյ բնակեցի ի սիրտ ծո-
վու. մարդ ես դու՝ եւ ոչ Աստուած,

---

գինեաւ Հեղբոնայ և ապիտակ ասու։ (19) Վեդան և Յաւան փոխանակ վաճառաց քոց տային տագանի. երկաթ գործեալ, կասիա և խունկեղէգն էին ի հրապարակի քում։ (20) Դեդան վաճառական քո ի հանդերձներ պատուականս վասն կառաց։ [1]Եբր. գառինս [2]Եբր. նոխազս [3]Եբր. ազգի ազգի համեմունս ընտիրս, և ազգի ազգի [4]Եբր. Քաննէ և Եդեմ, վաճառականք Սաբայ, Ասուր, Քաղմադ վաճառականք քո։ (24) Նոքա տանէին տուրեւառս ընտիր ընտիր վաճառօք. հանդերձիւք ի կապուտակէ գործ նկարագործ, յարկեղս լի գանձիւք, վանդակեալս չուանօք և յօրինեալս ի նոճւոյ ի վաճառս քո։ (25) Նաւք Թարսիսի կարաւանք քո ի վաճառ քո. և լցար և մեծացար յոյժ ի սիրտ ծովուց։ (26) Ի ջուրս բազումս ածին զքեզ նաւավարք քո. հողմն արեւելից եբեկ զքեզ ի սիրտ ծովուց։ (27) Մեծութիւն քո և վաճառք քո. տուրեւառ քո, նաւապետք քո և նաւավարք, նորոգիչք խորտակմանն նաւաց քոց, և միջնորդք վաճառաց քոց

[5]Եբր. նաւապետաց քոց զարհուրեսցին արուարձանք (կամ, ալիք) [6]Եբր. որ վարեն թիակօք, նաւավարք, ամենայն նաւապետք ծովու ի ցամաքի կացցեն. (30) Եւ լսելի արասցեն զքեն կատարեալ իւրեանց, և [7]Եբր. [illegible] վասն քո [8]Եբր. Եւ ողբս առցեն ի վերայ քո ի թախծութեան իւրեանց, և ողբասցեն վասն քո [9]Եբր. Ցելանել վաճառաց քոց ի ծովուց՝ յագեցուցեր զազգս բազումս, ի յաճախութենէ մեծութեան քո [10]Եբր. զթագաւորս երկրի։ (34) Ի ժամանակի բեկման ի ծովուց [11]Ցեբր. դադարէ [12]Եբր. խռովեցան երեսօք [13]Եբր. եղեր սոսկումն

եւ ետուր զսիրտ քո իբրեւ զսիրտն Աս-
3 տուծոյ ։ [1]Միթէ իմաստնագո՞յն իցես քան
զԴանիէլ . կամ իմաստո՞ւնք խրատեցին
4 զքեզ հանճարովն իւրեանց . Միթէ ի-
մաստութեա՞մբ քով կամ խորհրդով" ա-
րարեր դու քեզ զօրութիւն , եւ ստա-
5 ցար ոսկի եւ արծաթ ի գանձս քո . [2]Կամ
բազմութեամբ իմաստութեան քո եւ
վաճառաց՝ յաճախեցեր զզօրութիւն քո,
եւ բարձրացաւ սիրտ քո զօրութեամբն
6 քով ։ Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր
Տէր . Վասն զի ետուր զսիրտ քո իբրեւ
7 զսիրտն Աստուծոյ , Փոխանակ այնորիկ
ահաւասիկ ես ածից ի վերայ քո օտարս
ժանտագործս յազգաց , եւ թափեսցեն
զսուր իւրեանց [2]ի քեզ, եւ" ի վերայ գե-
ղոյ իմաստութեան քո , եւ [3]տարածես-
8 ցեն զգեղ քո ի կորուստ . Եւ կործա-
նեսցեն" զքեզ , եւ մեռանիցիս մահու
9 վիրաւորաց ի սիրտ ծովու ։ Միթէ ա-
սելով ասիցե՞ս, Աստուած եմ ես, առաջի
վիրագացն քոց . բայց դու մարդ ես, եւ
10 ոչ [4]Աստուած . Եւ ի բազմութեան վի-
րաւորաց քոց մեռելոց" անթլփատից
մեռանիցիս ի ձեռաց օտարաց , զի ես
խօսեցայ , ասէ Ադոնայի Տէր ։
11 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ ,
12 Որդի մարդոյ , ողբս առ ի վերայ իշխա-
նին Ծուրայ , եւ ասասցես ցնա , Այս-
պէս ասէ Տէր Տէր . Դու ես կնիք [5]նմա-
նութեան լի իմաստութեամբ, եւ պսակ
13 գեղեցկութեան . Ի զրգանս դրախտին
Աստուծոյ եղեր , եւ զամենայն ականս
պատուականս ի քեզ կապեցեր . զսար-
դիոն եւ զտպազիոն եւ [6]զզմրուխտ եւ
զկարկեհան եւ զշափիղայ եւ զյասպիսն ,
[2]զարծաթ եւ զոսկի," եւ զզոճագին ,
զակատն , [2]զմեղեսիկն , զոսկեքարն .
զբիւրեղն , զեղնգնաքարն . եւ [7]ոսկւով
լցուցեր զգանձս քո , եւ զշտեմարանս
քո ի քեզ," յօրէ յորմէ հաստատեցար
14 [8]եւ հանդերձեցար Ընդ օծելոյ քերով-
բէին ," եդու զքեզ . ի լեառն սուրբ
Աստուծոյ եղեր . ի մէջ հրեղէն [9]վիմացն
15 Եղեր անարատ յաւուրսն" քո , յօրէ
յորմէ հաստատեցար դու , մինչեւ գտան
16 անիրաւութիւնք ի քեզ ։ Ի բազմութենէ
վաճառաց քոց լցեր զշտեմարանս քո ա-
նիրաւութեամբ, [10]մեղար եւ վիրաւորե-
ցար . ի լեռնէն Աստուծոյ իջոյց զքեզ
քերովբէն" վարսաւոր , ի միջոյ հրեղէն
17 վիմացն ։ Բարձրացաւ սիրտ քո ի գե-
ղեցկութեան քում , [11]եւ ապականեցաւ
հանճար քո հանդերձ գեղովն քո . վասն
բազմութեան մեղաց քոց ընկեցի" զքեզ
յերկիր . յանդիման թագաւորաց ետու
18 զքեզ ի խայտառակութիւն ։ Վասն բազ-
մութեան մեղաց քոց ի խարդախութեան
վաճառաց քոց՝ պղծեցեր զսրբութիւնս
քո . եւ հանից հուր ի միջոյ քումմէ, եւ
նոյն կերիցէ զքեզ , եւ տաց զքեզ ի
մոխիր [12]յերկրին քում" առաջի ամենայն
19 տեսողացն քոց ։ Եւ ամենեքին որ ճա-
նաչիցեն զքեզ ի մէջ ազգաց՝ [13]տրտմես-
ցին վասն քո , զի եղեր ի կորուստ", եւ
ոչ եւս իցես յաւիտեան ։
20 [2]Ի վերայ Ծայդանու ։" Եւ եղեւ բան
21 Տեառն առ իս եւ ասէ , Որդի մարդոյ ,
հաստատեա զերեսս քո ի վերայ Ծայ-
դանու , եւ մարգարեաց ի վերայ նորա .
22 Եւ ասասցես , Այսպէս ասէ Ադոնայի
Տէր . Ահաւասիկ ես ի վերայ քո , Ծայ-
դան , եւ փառաւորեցայց ես ի քեզ . եւ
[14]ծանիցես թէ ես եմ Տէր՝ յառնել
ինձ [15]ի քեզ դատաստանս, եւ սուրբ ե-
23 ղէց ես [16]ի քեզ ։ Եւ առաքեցից [16]ի վերայ
քո" մահ , եւ արիւն ի հրապարակս [17]քո .
եւ անկցին վիրաւորք ի միջի [17]քում ,
սպանեալքն շուրջ [18]զքեւ սրով , եւ ծա-
24 նիցեն թէ ես եմ Տէր ։ Եւ ոչ եւս ե-
ղիցի տանն Իսրայելի խոչ դառնութեան ,
եւ փուշ ցաւոց յամենեցունց որ շուր-
ջանակի անարգեցին զնոսա . եւ ծանի-
ցեն թէ ես եմ Ադոնայի Տէր ։
25 Այսպէս ասէ Ադոնայի Տէր . [19]Եւ ժո-
ղովեցից" զտունն Իսրայելի յազգաց ուր
ցրուեցան անդր , եւ սուրբ եղէց ի նո-
սա առաջի ազգաց [2]եւ ժողովրդոց". եւ

---

[1]Եբր. Ահա իմաստուն ես դու քան զԴանիէլ. բնաւ ոչ ծածկեցան ի քէն գաղտնիք. (4) Իմաստութեամբ քով և հանճարով քով [2]Չեբր. պակաս [3]Եբր. ապականեսցեն զվայելչութիւն քո. (8) Ի խորխորատ իջուսցեն [4]Եբր. Աստուած ի ձեռս սպանողաց քոց. (10) Զմահ [5]Կամ, յրութեան [6]Եբր. և զադամանդ և զյակինթ [7]Եբր. զմրուխտ և զոսկի. գործ թմբկաց քոց և սրնգաց քոց ի քեզ. [8]Եբր. հանդերձեցաւ. (14)Դու քերովբ օծեալ որ ծածկէիր, եւ

[9]Եբր. վիմացն շրջէիր։ (15)Եղեր անարատ ի ճանապարհս [10]Եբր. և մեղար. վասն որոյ և ես մերժեցի զքեզ իբրեւ պիղծ ի լեռնէն Աստուծոյ, և կորուսի զքեզ. քերովբ [11]Եբր. կորուսեր զիմաստութիւն քո վասն գեղոյ քո. ընկեցի [12]Եբր. յերկրի [13]Եբր. զարմասցին վասն քո. եղեր ի սոսկումն [14]Եբր. ծանիցեն [15]Եբր. ի նմա [16]Եբր. ի նա [17]Եբր. նորա [18]Եբր. զնովաւ [19]Եբր. Ի ժողովել ինձ

բնակեսցեն յերկրին իւրեանց զոր ետու
26 ծառային իմում Յակոբու. Եւ բնա-
կեսցեն ի նմա [1]յուսով. շինեսցեն տունս
եւ տնկեսցեն այգիս, եւ բնակեսցեն [1]յու-
սով, յորժամ արարից դատաստան յա-
մենեսին որ շուրջանակի անարգեցին
զնոսա. եւ ծանիցեն թէ ես եմ Տէր
Աստուած նոցա [2]եւ Աստուած հարց
նոցա"։

ԳԼ. ԻԹ

[2]Ի վերայ Եգիպտոսի եւ Փարաւոնի
արքային Եգիպտացւոց։"

1 Յամին տասներորդի, յամսեանն տաս-
ներորդի, որ օր [3]մի էր ամսոյն, եղեւ բան
2 Տեառն առ իս եւ ասէ, Որդի մարդոյ,
հաստատեա զերեսս քո ի վերայ Փարա-
ւոնի արքային Եգիպտացւոց, մար-
գարեաց ի վերայ նորա եւ ի վերայ ա-
3 մենայն Եգիպտոսի. Խօսեաց եւ ասաս-
ցես, Այսպէս ասէ Տէր Տէր. Ահաւա-
սիկ ես ի վերայ քո, Փարաւոն ար-
քայ Եգիպտացւոց, վիշապդ մեծ՝ որ
[4]նստիս ի մէջ գետոց, որ ասես թէ իմ
4 են գետք եւ ես արարի զսոսա"։ Եւ
ես արկից զանգանաւանս ի կզակս քո,
եւ մածուցից զձկունս գետոց ի թեւս
քո, եւ հանից [5]ի միջոյ քումմէ զգետս
քո", եւ ամենայն ձկունք գետոց կցես-
5 ցին ի թեւս քո. Եւ [6]կործանեցից զքեզ
արագ արագ," եւ զամենայն ձկունս
գետոց քո. ընդ երեսս դաշտին անկա-
նիցիս, եւ մի՛ ժողովեսցիս, եւ մի՛ եւս
հաւաքեսցիս. զի գազանաց երկրի եւ
թռչնոց երկնից ետու զքեզ ի կերակուր։
6 Եւ ծանիցեն ամենայն բնակիչք Եգիպ-
տացւոց թէ ես եմ Տէր, փոխանակ զի
եղեն գաւազան եղեգնեայ տանն Իսրա-
7 յելի. Եւ յորժամ [7]յենուին ի քեզ՝ խրա-
նէիր ընդ ձեռս նոցա, եւ յորժամ բուռն
հարկանէր զքէն ամենայն ձեռն", եւ
յորժամ յենուին ի քեզ՝ խորտակէիր
եւ [8]լքկանէիր զամենայն մէջս նոցա։
8 Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր Տէր.
Ահաւասիկ ես ածեմ ի վերայ քո սուր,
եւ կորուսից ի քէն զմարդ եւ զանաս-
9 ունս։ Եւ եղիցի երկիրդ Եգիպտացւոց
ի կորուստ եւ յաւերակ, եւ ծանիցեն
թէ ես եմ Տէր. փոխանակ զի [9]ասէիր՝
թէ Գետքս իմ են, եւ ես արարի զսոսա"։
10 Վասն այդորիկ ահաւասիկ ես ի վերայ քո
եւ ի վերայ [2]ամենայն գետոցդ քոց, եւ
տաց զերկիրդ Եգիպտացւոց յաւերակ եւ
ի սուր եւ ի կորուստ, ի Մագդողայ եւ
ի Սուենեայ մինչեւ ի սահմանս Եթեով-
11 պացւոց։ Եւ մի՛ անցցէ ընդ նա ոտն
մարդոյ, եւ կճղակ անասնոյ մի՛ գնաս-
ցէ ընդ նա, եւ մի՛ բնակեսցէ ամս քա-
12 ռասուն։ Եւ տաց զերկիրն [10]նորա ի կո-
րուստ" ի մէջ աւերակ երկրին, եւ քա-
ղաքք նորա ի մէջ աւերեալ քաղաքաց
եղիցին յապականութիւն ամս քառա-
սուն. եւ ցրուեցից զԵգիպտոս ի մէջ
ազգաց, եւ հոսեցից զնոսա ընդ գա-
ւառս։
13 Զի այսպէս ասէ Տէր Տէր. Յետ ա-
մացն քառասնից ժողովեցից զԵգիպտա-
14 ցիս յազգաց ուր ցրուեցան ի նոսա. Եւ
դարձուցից զգերութիւն Եգիպտացւոյն,
եւ բնակեցուցից զնոսա յերկրին Պա-
թուրէս՝ յերկրին ուստի առան. եւ ե-
ղիցի անդ իշխանութիւն մի [11]տառապեալ
15 քան զամենայն իշխանութիւնս։ Եւ ե-
ղիցի" խոնարհագոյն, եւ մի՛ եւս բարձ-
րասցի ի վերայ ազգաց, եւ սակաւա-
ւորս արարից զնոսա, զի մի՛ [12]բազմաս-
16 ցին ի մէջ ազգաց։ Եւ մի՛ եւս եղիցին
տանն Իսրայելի [13]յոյս յիշատակի անօրէ-
նութեան՝ երթալ զհետ սոցա" նոցա,
եւ ծանիցեն թէ ես եմ Ադոնայի Տէր։
17 Եւ եղեւ ի քսաներորդի եւ յեւթներորդի
ամին, որ օր մի էր ամսոյն առաջնոյ,
18 եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ, Որ-
դի մարդոյ, Նաբուքոդոնոսոր արքայ
Բաբելացւոց աշխատեցոյց զզօրս իւր աշ-
խատութեամբ մեծաւ ի վերայ Ծուրայ.
ամենայն գլուխք կնդացեալք եւ ամե-
նայն ուսք գերծեալք. եւ վարձք նմա
եւ զօրաց նորա ոչ եղեն առ ի Ծուրայ
ծառայութեանն՝ զոր ծառայեցին [2]ինձ ի
19 նմա։ Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր

[1]Եբր. յապահովս [2]3Եբր. պակաս [3]Եբր. երկոտասան [4]Եբր. Նստի ի մէջ գետոց իւրոց, որ ասէ, Իմ է գետս իմ, և ես արարի վասն իմ [5]Եբր. զքեզ ի միջոյ գետոց քոց [6]Եբր. ընկեցից զքեզ յանապատ, զքեզ [7]Եբր. բռնեն հարկանէին զքեն, բեկանէիր և հերձնուիր զթեկն նոցա ողջոյն [8]Եբր. ընդարմացուցանէիր

[9]Եբր. ասաց, Իմ է գետս և ես արարի [10]Եբր. Եգիպտացւոց յամայութիւն [11]Եբր. խոնարհ (15)·Բան զիշխանութիւնս [12]Եբր. տիրեսցեն [13]Եբր. ի յոյս, յուշարար անօրէնութեան երթալ նոցա զկնի

Տէր . Ահաւասիկ ես տաց Նաբուքոդո-
նոսորայ արքայի Բաբելացւոց զերկիրն
Եգիպտացւոց , եւ առցէ զբազմութիւն
նորա , եւ աւարեսցէ զաւար նորա , եւ
կողոպտեսցէ զկապուտ նորա , եւ եղի-
20 ցի վարձ զօրաց նորա ։ Փոխանակ հար-
կին յորում ծառայեաց [1]ինձ ի Տիւր",
ետու նմա զերկիրն Եգիպտացւոց ընդ
ամենայնի զոր արարին ինձ . այսպէս
21 ասէ Տէր Տէր . Յաւուր յայնմիկ [2]ծա-
գեսցէ եղջեւր ամենայն" տանն Իսրա-
յէլի , եւ քեզ տաց բերան բաց ի մէջ
նոցա , եւ ծանիցեն թէ ես եմ Տէր ։

ԳԼ. Լ

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ ,
2 Որդի մարդոյ , մարգարէաց եւ ասա-
ցես , Այսպէս ասէ Ադոնայի Տէր [3]Տէր .
3 Ո՜հ, ո՜հ, օր . Զի մերձ է [4]օր Տեառն , օր
4 մգի . ժամանակ է վախճան ազգաց ։ Եւ
եկեսցէ սուր ի վերայ Եգիպտացւոց , եւ
եղիցի խռովութիւն ի կողմանս Եթեով-
պացւոց [5]եւ անկցին վիրաւորք" յԵ-
գիպտոս . եւ առցեն զբազմութիւն նո-
րա , եւ տապալեսցին հիմունք նորա ։
5 [6]Պարսիկք եւ Կրետացիք եւ Լիդացիք եւ
Լիբէացիք", եւ ամենայն խառնադանջքն,
եւ [7]յորդւոց ուխտին իմոյ ի նմա" սրով
կոտորեսցին ։
6 Այսպէս ասէ [3]Ադոնայի Տէր . Կործա-
նեսցին մայթքն Եգիպտացւոց , եւ իջցէ
հպարտութիւն զօրութեան նորա , ի
Մագդողայ մինչեւ ցՍուհէն սրով անկ-
7 ցին ի նմա , ասէ Ադոնայի Տէր . Եւ ա-
ւերեսցին ի մէջ ապականեալ աշխար-
հաց , եւ քաղաքք [8]նոցա ի մէջ քաղա-
8 քաց աւերելոց . Եւ ծանիցեն թէ ես եմ
Տէր , յորժամ արկից հուր ի վերայ Ե-
գիպտացւոյն , եւ խորտակեսցին ամե-
9 նայն օգնականք նորա ։ Յաւուր յայն-
միկ ելցեն հրեշտակք յերեսաց իմոց
[9]տագնապաւ՝ ապականել զանոտի յոյսն
Եթեովպացւոց", եւ եղիցի խռովութիւն
ի նոսա [10]յաւուրն Եգիպտացւոց , քանզի
ահաւասիկ հասեալ է ։

10 Այսպէս ասէ Տէր Տէր . Եւ կորուսից
զբազմութիւն Եգիպտացւոյն ի ձեռն
Նաբուքոդոնոսորայ արքային Բաբելաց-
11 ւոց , [11]Զնա եւ զազգ" նորա ընդ նմա
ժանտագործք յազգաց , առաքեալք կոր-
ծանել զերկիրն , եւ թափեսցեն զսուրս
իւրեանց ի վերայ Եգիպտոսի , եւ լցցի
12 երկիրն վիրաւորօք ։ Եւ տաց զգետս
նոցա յանապատ , եւ մատնեցից զեր-
կիրն ի ձեռս չարաց , եւ կորուսից զեր-
կիրն լրիւ իւրով ձեռօք այլազգեաց ,
զի ես Տէր խօսեցայ ։
13 Այսպէս ասէ Տէր Տէր . Եւ կորուսից
զգարշելիսն , եւ դադարեցուցից [12]զմե-
ծամեծս ի Մեմփացւոց , եւ [13]զիշխանս
յերկրէն Եգիպտացւոց , եւ ոչ եւս լինի-
ցին". եւ արկից ահ ի վերայ երկրին Ե-
14 գիպտացւոց ։ Եւ կորուսից [14]զերկիրն
Պաթուրէս ," եւ արկից հուր զՏաշա-
նու , եւ խնդրեցից զվրէժ [15]ի Դիոսպո-
15 լացւոց ։ Եւ հեղից զբարկութիւն իմ
ի վերայ Սայինայ , զօրութեանն Եգիպ-
տացւոց , եւ կորուսից զբազմութիւն
16 [16]Մեմփացւոց ։ Եւ տաց հուր յԵգիպտոս,
եւ խռովութեամբ խռովեսցի Սային , եւ
եղիցի [17]քաղաքն Դիոսպոլացւոց յերկի-
17 ծումն , եւ բղխեսցեն ջուրք"։ Երիտա-
սարդք Արեգ քաղաքի եւ Բուբաստայ
անկցին սրով , եւ [18]կանայք նոցա ի գե-
18 րութիւն վարեսցին ։ Եւ խաւարեսցի
տիւ ի Տափնաս , ի փշրել ինձ անդ զգա-
ւազան իշխանութեան Եգիպտացւոյն .
եւ կորիցէ անդ հպարտութիւն զօրու-
թեան նորա , եւ զնոյն՝ մէգ ծածկեսցէ .
եւ դստերք նորա ի գերութիւն վարես-
19 ցին ։ Եւ արարից դատաստանս յԵգիպ-
տոս , եւ ծանիցեն թէ ես եմ Տէր ։
20 Եւ եղեւ ի մետասաներորդի ամի անդ ,
յամսեանն առաջնում , որ օր եւթն էր
ամսոյն , եղեւ բան Տեառն առ իս եւ
21 ասէ , Որդի մարդոյ , զբազուկս Փարա-
ւոնի արքային Եգիպտացւոց խորտա-
կեցի , եւ ահա ոչ եւս պատեսցի ի
բժշկութիւն , եւ ոչ տացին ի վերայ նո-
րա դեղք , կամ թէ զօրանայցէ առնուլ
22 սուր ի ձեռին ։ Վասն այսորիկ այսպէս
ասէ Տէր Տէր . Ահաւասիկ ես ի վերայ

[1] Եբր. ի նմա [2] Եբր. բուսուցից զեղջեւրն [3] Եբր. դ-ո-յ-ա-ո-ե [4] Եբր. օր, և մերձ է օր [5] Եբր. յանկանել վիրաւորաց [6] Եբր. Եթէովպացիք և Փուդացիք և Լուդացիք [7] Եբր. Քուբացիք (կամ, Նուբիացիք) և որդիք երկրի ուխտին ընդ նոսա [8] Եբր. նորա եղիցին [9] Եբր. Նաւօք տագնապել զԵթէովպացիս որ են յապահովի [10] Եբր. որպէս յաւուրն

[11] Եբր. Նա և ազգ [12] Եբր. զկուռս [13] Եբր. իշխան յերկրէն Եգիպտացւոց ոչ եւս լինիցի [14] Եբր. զՊաթուրէս [15] Եբր. ի Նովայ [16] Եբր. Նովայ [17] Եբր. Նովայ յերգիծումն և Մեմփիս տագնապեսցի ի տուընջեան [18] Յեբր. դ-ո-յ-ա-ո-ե , այլ եւս՝ բնակիչք

Փարաւոնի արքային Եգիպտացւոց, եւ
խորտակեցից զբազուկս [1]նորա հզօրս,
զնեարդապատս եւ զաճառապատս", եւ
23 ընկեցից զսուրն ի ձեռանէ նորա. Եւ
ցրուեցից զԵգիպտոս ընդ ազգս, եւ հո-
24 սեցից զնոսա ընդ գաւառս: Եւ զօրա-
ցուցից զբազուկս արքային Բաբելաց-
ւոց, եւ տաց զսուր իմ ի ձեռս նորա.
եւ [2]ածցէ զայն ի վերայ երկրին Եգիպ-
տացւոց, եւ աւարեսցէ զաւար նորա,
25 եւ կողոպտեսցէ զկապուտ" նորա: Եւ
զօրացուցից զբազուկս արքային Բաբե-
լացւոց, եւ բազուկքն Փարաւոնի լքցին.
եւ ծանիցեն թէ ես եմ Տէր, ի տալ ինձ
զսուրն իմ ի ձեռս արքային Բաբելաց-
ւոց, եւ [3]ձգեսցի զնա ի վերայ երկրին
26 Եգիպտացւոց: Եւ ցրուեցից զԵգիպտոս
ընդ ազգս, եւ հոսեցից զնոսա ընդ գա-
ւառս, եւ ծանիցեն [4]ամենայն Եգիպ-
տացիքն" թէ ես եմ Տէր:

## ԳԼ. ԼԱ

1 Եւ եղեւ յամին մետասաներորդի, յամ-
սեանն երրորդի, որ օր մի էր ամսոյն,
2 եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ, Որ-
դի մարդոյ, ասա ցարքայն Եգիպտաց-
ւոց զՓարաւոն եւ ցզօրս իւր, Ո՞ւմ
նմանեցուցեր զքեզ ի հպարտութեանդ
3 քում: Ահաւասիկ Ասուր իբրեւ նոճ մի
ի Լիբանան գեղեցիկ շառաւիղօք եւ խիտ
ստուերք եւ բարձր մեծութեամբ, [5]ի
4 մէջ ամպոց" եղեւ գլուխ նորա. Ջուր
սնոյց զնա, անդունդք բարձրացուցին
զնա. [6]եւ զգետս նորա ած" շուրջ
զտնկովք իւրովք, եւ [7]զանտառախիտս
իւր արձակեաց ընդ ամենայն փայտս
5 դաշտին: Վասն այնորիկ բարձրացաւ
մեծութիւն նորա քան զամենայն ծառս
դաշտին, եւ տարածեցան ոստք նորա,
եւ բարձրացան շառաւիղք նորա ի ջուրց
6 բազմաց ի տարածանել իւրում: Ի շա-
ռաւիղս նորա բնակեցին ամենայն թռ-
չունք երկնից, եւ ի ներքոյ ոստոյն նո-
րա ծնան ամենայն գազանք դաշտի, եւ
ընդ հովանեաւ նորա բնակեցին ամե-
7 նայն բազմութիւնք ազգաց: Եւ եղեւ
գեղեցիկ բարձրութեամբ իւրով՝ վասն
երկայնութեան ոստոց իւրոց, զի եղեն
8 արմատք նորա ի ջուրս բազումս: [8]Սարդն
եւ սարոյն եւ նոճ ի դրախտին Աստու-
ծոյ՝ ոչ հաւասարեցին շառաւիղաց նո-
րա, մայրքն եւ սօսոյք ոչ" նմանեցին
ոստոց նորա. ամենայն փայտ ի դրախ-
տին Աստուծոյ ոչ նմանեցին նմա գե-
9 ղեցկութեամբ. [9]Վասն անտառախիտ
ոստոց" նորա, եւ նախանձեցան ընդ
նմա ամենայն ծառք դրախտին փափ-
կութեան Աստուծոյ:
10 Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր Տէր.
Փոխանակ զի մեծացար մեծութեամբ,
եւ [10]հասին ծայրք քո յամպս, եւ տեսի
11 զհպարտութիւն քո. Եւ մատնեցի զքեզ
ի ձեռս իշխանին ազգաց, եւ արարին
12 զնա ի կորուստ" Եւ հանին զնա, եւ սա-
տակեցին զնա օտարք ժանտագործք
յազգաց, եւ տապալեցին զնա ի վերայ
լերանց եւ յամենայն ձորս անկան ոստք
նորա, եւ խորտակեցաւ ստեղն նորա
ընդ ամենայն դաշտս երկրի. եւ իջին
ի հովանւոյ նորա ամենայն ազգք ա-
13 զանց, եւ յատակեցին զնա: [11]Եւ ի գլո-
րեալն" նորա՝ հանգիստ եղեւ ամենայն
թռչնոց երկնից, եւ ի ստեղն նորա հա-
14 սին ամենայն գազանք վայրի: Զի մի՛
եւս հպարտասցին ի մեծութեան իւրեանց
ամենայն փայտք ջրասունք, եւ ոչ ար-
ձակեսցեն զծայրս իւրեանց [12]ընդ ամպս",
եւ մի կացցեն ի հպարտութեան իւ-
րեանց իբրեւ զնա որ ըմպիցէ ջուր. ա-
մենեքին ի մահ մատնեցան ի խորս երկ-
րի՝ ի մէջ որդւոց մարդկան իջելոց ի
15 խորխորատ: Այսպէս ասէ Տէր Տէր.
Յաւուր յորում էջ ի դժոխս՝ [13]սուգ ա-
ռին ի վերայ նորա անդունդք". եւ ար-
գելի զգետս նորա, եւ [14]խից արկի ջուրց
բազմաց, եւ խորեցաւ ի վերայ նորա
Լիբանան", եւ ամենայն ծառք դաշտի
16 լքան վասն նորա: Ի ձայնէ կործան-

[1]Եբր. նորա, զհզօրն և զբեկեալն [2]Եբր. բեկից զբազուկս Փարաւոնի, և աղաղակեսցէ զաղաղակ վիրաւորի առաջի [3]Եբր. ձգեսցէ [4]Յեբր. [illegible] [5]Կամ, ի թաւուտս [6]Եբր. գետք նորա գնան [7]Եբր. զջրանցս

[8]Եբր. Եղեւնինք ոչ ծածկեցին զնա ի դրախտին Աստուծոյ, մայրք ոչ նմանեցին ոստոց նորա, և սօսիք ոչ եղեն իբրեւ զշառաւիղս նորա, ոչ [9]Եբր. Գեղեցիկս արարի զնա անտառախիտ ոստովք [10]Եբր. ետ զկատար իւր ի մէջ ամպոց (կամ, ի թաւուտս) և բարձրացաւ սիրտ նորա ի բարձրութեան իւրում, (11) Եւ ես մատնեցի զնա ի ձեռս հզօրին ազգաց. տանելով արասցէ նմա հատուցումն. վասն ամպարշտութեան նորա ընկեցի զնա: [11]Եբր. Ի վերայ թօթափելոյ [12]Կամ, ի թաւուտս [13]Եբր. ետու սուգ առնուլ. ծածկեցի վասն նորա զանդունդս [14]Եբր. խցան ջուրք բազումք, և տխրեցուցի վասն նորա զԼիբանան

ման նորա [1]դղրդեցան ազգք՝՝, յորժամ
իջուցի զնա ի դժոխս ընդ իջելոյն ի
գուբ. եւ [2]մխիթարեցին զնա ի սան-
դարամետս ամենայն ծառք փափկու-
թեան, եւ՝՝ ընտիր ընտիր գեղեցիկքն
17 Լիբանանու որ էին ջրարբիք։ [3]Քանզի
նոքա իջին ընդ նմա վիրաւորօք սրոյ
ի դժոխս. եւ զաւակք նորա որ բնա-
կեալ էին ընդ հովանեաւ նորա, յընդ-
միջել կենաց իւրեանց սատակեցան՝՝
18 Ո՞ւմ նմանեցար [4]զօրութեամբ եւ՝՝ փա-
ռօք եւ մեծութեամբ՝ ի ծառս [5]փափ-
կութեան. էջ եւ զիջիր հանդերձ ծա-
ռովք փափկութեան քո՝՝ ի խորս երկ-
րի, ի մէջ անթլփատից [6]ննջեցելոց ընդ
վիրաւորս սրոյ. սոյնպէս Փարաւոն եւ
ամենայն բազմութիւն զօրութեան իւ-
րոյ, ասէ Տէր Տէր։

ԳԼ. ԼԲ

1 Եւ եղեւ յամին երկոտասաներորդի,
յամսեանն երկոտասաներորդի, որ օր մի
էր ամսոյն, եղեւ բան Տեառն առ իս եւ
2 ասէ, Որդի մարդոյ, ողբս առ ի վերայ
Փարաւոնի արքային Եգիպտացւոց եւ
ասասցես ցնա, [7]Առիւծացուր ի մէջ ազ-
գաց, եւ՝ նմանեցար վիշապի՝՝ ի մէջ ծո-
վու, եւ ոգորէիր ընդ գետս քո, եւ ոտ-
ամբք պղտորէիր զջուրսն, եւ առա-
3 թուր կոխան առնէիր զգետս [8]քո։ Այս-
պէս ասէ Տէր Տէր. Պատեցից զքեզ
թակարդօք խռովք ժողովովք զօրաց
բազմաց, եւ [9]հանից զքեզ կարթիւ ի-
4 մով։ Տապաստապարեցից զքեզ ի վերայ
երկրի, [10]եւ լցցին քեւ դաշտք՝՝. եւ ի-
ջուցից ի վերայ քո զամենայն թռչունս
երկնից, եւ յագեցուցից ի քէն զամե-
5 նայն գազանս երկրի։ Եւ տաց զմար-
մինս քո ի վերայ լերանց, եւ լցուցից
6 զձորս [11]յարենէ քումմէ. Եւ արբեսցի
երկիր յապականէ քումմէ՝ ի բազմու-
թեան քո ի վերայ լերանց, զձորս լցից՝՝
7 ի քէն։ Եւ պատրուակեցից զերկինս ի
շիջանել քում, եւ խաւարեցուցից զաս-
տեղս նորա. զարեգակն ամպով ծած-
կեցից, եւ լուսին մի՛ տացէ զլոյս իւր։
8 Եւ զամենայն լուսաւորս [12]խաւարեցու-
ցից ի վերայ քո, եւ տաց խաւար ի վե-
9 րայ[13] քո, ասէ Տէր Տէր։ Եւ զայրա-
ցուցից զսիրտս ազգաց բազմաց, ի ժա-
մանակի իբրեւ [14]հանից զգերութիւն քո
10 ընդ ազգս յերկիր զոր ոչ գիտիցես։ Եւ
տրտմեսցին ի վերայ քո ազգք բազումք՝՝,
եւ թագաւորք նոցա զարհուրելով [15]զար-
հուրեսցին, ի թռչել սրոյ իմոյ առաջի
երեսաց նոցա ակն ունել կործանման
իւրեանց յօրէ՝՝ կործանման քո։
11 Զի այսպէս ասէ Տէր Տէր. Սուր ար-
քային Բաբելացւոց եկեսցէ ի վերայ [16]քո
12 Հանդերձ սրով սկայից, եւ կործանեցից
զզօրութիւն քո. եկեսցեն ամենայն՝՝
ժանտագործք ազգաց, եւ կորուսցեն
զհպարտութիւն Եգիպտացւոց, եւ խոր-
13 տակեսցի ամենայն զօրութիւն նորա։ Եւ
կորուսից զամենայն անասունս նորա ի
ջուրց բազմաց, եւ [17]մի՛ պղտորեսցէ զնա՝՝
ոտն մարդոյ, եւ կճղակ անասնոյ մի՛
14 կոխեսցէ [18]զնա։ Եւ ապա դադարեսցեն
ջուրք նոցա, եւ գետք նոցա նման իւ-
15 ղոյ գնասցեն՝՝, ասէ Ադոնայի Տէր։ Յոր-
ժամ տաց զԵգիպտոս ի կորուստ, եւ
աւերեսցի երկիրն լրիւ իւրով, յորժամ
[19]ցրուեցից զամենայն բնակիչս ի նմա-
նէ՝՝, եւ ծանիցեն թէ ես եմ Տէր։
16 Ողբք են, եւ ողբասցեն զնա, եւ
դստերք ազգաց ողբասցեն զնա. ի վե-
րայ Եգիպտոսի եւ ի վերայ ամենայն
զօրութեան նորա ողբասցեն զնա, ասէ
Տէր Տէր։
17 Եւ եղեւ յամին երկոտասաներորդի,
[1]յամսեանն առաջնում՝՝, որ օր հնգետա-
սան էր ամսոյն, եղեւ բան Տեառն առ
իս եւ ասէ,

[1] Եբր. դղրդեցուցի զազգս [2] Եբր. մխիթարեցան ի սանդարամետս ամենայն ծառք Եդեմայ, [3] Եբր. Սոքա եւս ընդ նմա իջին ի դժոխս առ որս անկեալ էին սրով և բազուկ նորա եւ որ բնակեալ էին ընդ հովանեաւ նորա ի մէջ ազգաց։ [4] Յեբր. գոլով [5] Եբր. Եդեմայ. իջուցիս հանդերձ ծառովք Եդեմայ [6] Եբր. ննջեցեա [7] Եբր. Կորեան առիւծու ի մէջ ազգաց նմանեցար. և դու ես իբրեւ զվիշապ [8] Եբր. նոցա [9] Եբր. հանցեն [10] Եբր. ընդ երեսս դաշտի արկից զքեզ [11] Եբր. բարձամբք քով. (6) Եւ ոռոգեցից զերկիրն ուր լողաս՝ յարենէ քումմէ ցլերինս, և ձորք լցցին

[12] Եբր. լուսոյ յերկինս՝ խաւարեցուցից [13] Եբրայեցին յաւելու. երկրի [14] Եբր. ածից զհամբաւ բեկման քո ընդ ազգս՝ յերկիրս զոր ոչ գիտիցես։ (10) Եւ ապշեցուցից վասն քո զազգս բազումս [15] Եբր. զարհուրեսցին վասն քո, ի շողացուցանել զսուր իմ առաջի երեսաց նոցա, և դողասցեն հանապազ այր իւրաքանչիւր յանձին իւրում յաւուր [16] Եբր. քո. (12) Սրովք սկայից տապաստ արկից զամբոխ քո, ամենեքին [17] Եբր. մի՛ եւս պղտորեսցէ զնոսա [18] Եբր. զնոսա։ (14) Յայնժամ արարից ջինջ զջուրս նոցա, և զգետս նոցա նման իւղոյ գնացուցից [19] Եբր. հարից զամենայն բնակիչս նորա

18 Որդի մարդոյ, ողբս առ ի վերայ զօ-
րութեանն Եգիպտոսի, եւ [1]իջուսցեն
զդստերս նորա ազգքն՝ զմեռեալս ի խորս
19 երկրի։ Առ իջեալսն ի խորխորատ՝ ի
ջուրց վայելչութեան, էջ ննջեա ընդ
20 անթլփատս ի մէջ վիրաւորաց. Սրով
անկցին ընդ նմա, եւ դադարեսցէ ա-
21 մենայն զօրութիւն նորա։ Եւ ասասցեն
ցքեզ սկայքն, Եկ էջ ի խորս խորինս,
զի քան զո՞վ լաւ էիր դու. էջ եւ դա-
դարեա ընդ անթլփատս ի մէջ վիրաւո-
րաց՝՝ սրոյ։
22 Անդ Ասուր եւ ամենայն ժողովք նո-
23 րա, [2]ամենեքին վիրաւորք՝՝. Անդ տուաւ
գերեզման նորա ի խորս խորխորատին,
եւ եղեւ ժողովք նորա շուրջ զշիրմօք
նորա. [3]ամենայն վիրաւորք անկան սրով,
որ արարին զգերեզմանս իւրեանց յա-
տակս գբոյ, եւ եղեն ժողովք շուրջ
զգերեզմանօք նորա՝՝ ամենեքին [4]վի-
րաւորք անկեալք ի սրոյ, որ ետուն
զահ [3]իւրեանց ի վերայ երկրին կենդա-
նութեան։
24 Անդ Եղամ, եւ ամենայն զօրութիւն
նորա շուրջ զգերեզմանաւ նորա. ամե-
նեքին վիրաւորք անկեալք ի սրոյ՝ իջին
անթլփատք ի խորս երկրի, որ ետուն
զահ [4]իւրեանց յերկրին կենդանութեան,
եւ ընկալան [5]զտանջանս իւրեանց ընդ
25 իջեալսն ի խորխորատ ի մէջ վիրաւո-
26 րաց։ Անդ տուան՝՝ Մոսոք եւ Թոբէլ,
եւ ամենայն զօրութիւնք [6]նոցա շուրջ
զգերեզմանաւ նորա. ամենայն վիրա-
ւորք նորա՝՝ ամենեքեան անթլփատք
վիրաւորք անկեալք ի սրոյ, որ ետուն
զահ իւրեանց ի վերայ երկրին կենդա-
27 նութեան։ Եւ ոչ ննջեցին ընդ հսկայսն
անկեալսն [7]յաւիտենից, որ իջին ի դժոխս
պատերազմօք զինուքն իւրեանց, եւ
[8]եդան անօրէնութիւնք նոցա ի վերայ
ոսկերաց իւրեանց. զի զարհուրեցու-
ցին զհսկայս ի կենդանութեան իւրեանց։
28 Եւ դու ի մէջ անթլփատիցն խորտա-
կեսցիս, եւ ննջեսցես ի մէջ վիրաւո-
րացն սրոյ։
29 Անդ Եդովմ եւ թագաւորք իւր եւ ա-
մենայն իշխանք նորա, որ [9]ետուն զզօ-
րութիւն իւրեանց ի հարուածս սրոյ.
եւ նոքա ընդ վիրաւորս ննջեցին՝՝ ընդ
իջեալսն ի խորխորատ։
30 Անդ ամենայն իշխանք հիւսիսոյ, եւ
[10]ամենեքեան նոքա զօրավարք Ասորես-
տանեայն՝՝, իջեալք վիրաւորք հանդերձ
ահիւն զօրութեամբ իւրեանց. ամօթա-
լից ննջեցին անթլփատք ընդ վիրաւորս
սուսերաց, եւ տարան [11]զտանջանս իւր-
եանց ընդ իջեալսն ի խորխորատ։
31 Զնոսա տեսցէ Փարաւոն եւ մխիթա-
րեսցի ի վերայ ամենայն զօրութեան
[12]նոցա. վիրաւորք Փարաւոնի ի սրոյ,
եւ ամենայն զօրութիւն նորա՝՝, ասէ Տէր
32 Տէր։ Զի [13]ետ զահ իւր՝՝ յերկրին կենդա-
նութեան, եւ ննջեսցէ ի մէջ անթլփա-
տիցն [14]վիրաւորելոց սրով, Փարաւոն եւ
ամենայն բազմութիւն իւր [3]ընդ նմին՝՝,
ասէ Տէր Տէր։

## ԳԼ. ԼԳ

[3]Առ որդիսն Յակովբու։՝՝

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, խօսեաց ընդ որդիս ժո-
ղովրդեան քո, եւ ասասցես ցնոսա,
Երկիր մի՝ յորոյ վերայ ածիցեմ ես սուր,
եւ առնուցուն ազգք երկրին այր մի յինք-
3 եանց, եւ կացուցանիցեն զնա դէտ, Եւ
տեսանիցէ սուր եկեալ յերկիրն, եւ փող
հարկանիցէ եւ ազդ առնիցէ ժողովրդ-
4 եանն. Եւ լսելով լսիցէ զձայն փողոյն

---

[1]Եբր. իջո զնա և զդստերս ազգաց փառաւորաց ի խորս երկրի՝ առ իջեալսն ի խորխորատ։ (19) Ի՞ւ ևս լաւ գեղեցիկ իցես. էջ և ննջեա ընդ անթլփատս։ (20) Ի մէջ սպանելոց սրոյ անկցին. մատնեցաւ նա սրոյ. քարշեցէք զնա և զամբոխ նորա։ (21) Խօսեսցին նմա հզօրք սկայից ի միջոյ սանդարամետայ, հանդերձ օգնականօք նորա. իջին ննջեցին անթլփատք, սպանեալք [2]Եբր. շուրջ զնովաւ գերեզմանք նորա. ամենեքին սպանեալք՝ անկեալք սրոյ [3]Եբր. [illegible] [4]Իմա՛ սպանեալք, [illegible] [5]Եբր. զնախատինս իւրեանց ընդ իջեալսն ի խորխորատ։ (25) Ի մէջ սպանելոց արկին անկողին նմա և ամենայն բազմութեան նորա. շուրջ զնովաւ գերեզմանք նորա. ամենեքին նոքա անթլփատք, սպանեալք սրոյ, թէպէտ և տուաւ ահ նոցա յերկրին կենդանութեան, սակայն ընկալան զնախատինս իւրեանց ընդ իջեալսն ի գուբ, ի մէջ սպանելոց եդաւ։ (26) Անդ [6]Եբր. Նորա, շուրջ զնովաւ գերեզմանք նորա.

[7]Եբր. յանթլփատից [8]Եբր. եդին զսուսերս իւրեանց ընդ գլխովք իւրեանց. սակայն եղեն [9]Եբր. եդան զօրութեամբ իւրեանց ընդ սպանեալս սրոյ, ընդ անթլփատս ննջեցին և [10]Եբր. ամենայն Սիդոնացիք [11]Կամ, զնախատինս [12]Եբր. իւրոյ. Փարաւոն և ամենայն զօրք նորա, սպանեալք սրոյ [13]Եբր. ետու զահ իմ (կամ, նորա) [14]Եբր. ընդ սպանեալս

և ոչ զգուշասցի, և հասանիցէ սուրն
և ըմբռնիցէ զնա, արիւն նորա ի գլուխ
5 նորին եղիցի։ Զի զձայն լուաւ փո-
ղոյն և ոչ զգուշացաւ, արիւն նորա ի
վերայ նորին եղիցի. և նա՝ զի զգու-
6 շացոյց, զանձն իւր ապրեցոյց։ Եւ ե-
թէ տեսանիցէ դէտն զսուրն եկեալ, և
ոչ նշանակիցէ փողով, և ազգն ոչ զգու-
շանայցէ, և եկեալ սուրն ըմբռնիցէ ի
նոցանէ անձն մի, նա վասն անօրէնու-
թեան իւրոյ ըմբռնեցաւ, և զարիւն
նորա ի ձեռաց դիտին խնդրեցից։
7 Եւ դու, որդի մարդոյ, դէտ ետու
զքեզ տանդ Իսրայէլի, և լուիցես բա-
նից բերանոյ իմոյ, և զգուշացուսցես
8 զնոսա իբրև յինէն։ Յասել ինձ ցմեղա-
ւորն թէ Մահու մեռանիցիս, և դու
ոչ խօսիցիս զգուշացուցանել զամպա-
րիշտն ի ճանապարհէ իւրմէ, ինքն ա-
նօրէնն յանօրէնութեան իւրում մեռցի,
և զարիւն նորա ի ձեռաց քոց խնդրե-
9 ցից։ Ապա թէ դու յառաջագոյն պատ-
մեսցես ամպարշտին զճանապարհս իւր՝
դառնալ նմա ի նմանէ, և ոչ դարձցի
ի ճանապարհէ իւրմէ, ինքն յամպարշտու-
թեան իւրում մեռցի, և դու զանձն
քո ապրեցուսցես։
10 Եւ դու, որդի մարդոյ, ասա ցտունդ
Իսրայէլի, Այսպէս խօսեցարուք և ա-
սացէք, [1]Եթէ Մոլորութիւնք" մեր և
անօրէնութիւնք մեր ի մեզ են, և մեք
ի նոսին մաշիմք, և զիա՞րդ ապրես-
11 ցուք։ Ասա ցնոսա, Կենդանի եմ ես,
ասէ Ադոնայի Տէր, ոչ կամիմ զմահ ամ-
պարշտին, որպէս զդառնալ ամպարշտին
ի չար ճանապարհէ իւրմէ և կեալ. դառ-
նալով դարձարուք ի ճանապարհաց ձե-
րոց չարաց, և ընդէ՞ր մեռանիք, տունդ
Իսրայէլի։
12 Եւ դու, որդի մարդոյ, ասա ցորդիս
ժողովրդեան քո, Արդարութիւն ար-
դարոյն ոչ փրկեսցէ զնա՝ յաւուր յորում
մոլորեսցի, և անօրէնութիւն անօրի-
նին ոչ [2]չարչարեսցէ զնա՝ յաւուր յո-
րում դառնայցէ յամենայն անօրէնու-
թենէ" իւրմէ. և արդարն ոչ կարասցէ
13 ապրել յաւուր մեղաց իւրոց։ Յասել
ինձ ցարդարն՝ թէ Կենօք կեցցես, և նա
յուսացեալ յարդարութիւն իւր՝ առնիցէ
անօրէնութիւն, ամենայն արդարու-
թիւնք նորա մի՛ յիշեսցին, այլ անօրէ-
նութեամբն իւրով զոր արար՝ նովին
14 մեռցի։ Եւ յասել ինձ ցամպարիշտն թէ
Մահու մեռջիր, և դարձցի ի մեղաց
իւրոց, և արասցէ իրաւունս և ար-
15 դարութիւն, Եւ զգրաւ պարտապանին
ի բաց տացէ, և զյափշտակութիւնն
դարձուցանիցէ, ի հրամանս կենաց գնաս-
ցէ՝ չառնել զանիրաւութիւն, կենօք կեց-
16 ցէ, և մի՛ մեռցի. Ամենայն մեղք իւր
զոր մեղաւ՝ մի՛ յիշեսցին. զի իրաւունս
և արդարութիւն արար, [3]նոքիմբք կեցցէ։
17 Եւ ասեն որդիք ժողովրդեան քո. Ոչ
ուղիղ է ճանապարհ Տեառն. նա՝ նոցա
18 ճանապարհն ոչ է ուղիղ։ Ի դառնալ ար-
դարոյն յարդարութենէ իւրմէ և առնել
19 անիրաւութիւնս՝ [4]նոքիմբք մեռցի։ Եւ
ի դառնալ մեղաւորին յանօրէնութենէ
իւրմէ և առնել իրաւունս և արդա-
20 րութիւն, նոքիմբք կեցցէ։ Եւ [5]ա՞յս է
զոր ասացէքն" թէ Ոչ ուղիղ է ճանա-
պարհ Տեառն. զիւրաքանչիւր ոք ըստ
ճանապարհաց ձերոց դատեցայց զձեզ,
տունդ Իսրայէլի։
21 Եւ եղև յամին երկոտասաներորդի,
ի տասներորդ ամսեանն, որ օր հինգ էր
ամսոյն գերութեան մերոյ, եհաս առ իս
ոմն զերծեալ յԵրուսաղեմէ, և ասէ,
22 Առաւ քաղաքն։ Եւ ձեռն Տեառն եղեալ
ի վերայ իմ յերեկորեայն՝ մինչչև եկեալ
էր [6]նորա, և եբաց զբերան իմ [7]մինչ-
չև եկեալ էր" ընդ առաւօտն. և ի բա-
նալ բերանոյ իմոյ՝ ոչ ևս ամփոփեցաւ
անդրէն։
23 Եւ եղև բան Տեառն առ իս և ասէ,
24 Որդի մարդոյ, բնակիչք աւերակաց
երկրին Իսրայէլի ասեն, Մի մարդ էր
Աբրահամ, և կալաւ զերկիրն. և արդ
մեք բազումք եմք, և մեզ տուեալ է
երկիրն ի ժառանգութիւն, [8]ո՞չ ժառան-
25 գեսցեմք զնա" Վասն այնորիկ ասա ցնո-
սա, Այսպէս ասէ Ադոնայի Տէր. Որով-
հետև ի վերայ արեան ուտէք, և զաչս
ձեր արձակեցէք ի կուռս, և արիւն հե-
ղուք, և կամիք զերկիրն ժառանգե՞լ։
26 [9]Եղիցի դա ձեզ ի սուր, զի" արարէք
պղծութիւնս, իւրաքանչիւր զկին ըն-
կերի իւրոյ պղծէիք. և արդ այդի՞ւ
27 ժառանգիցէք զերկիրն։ Վասն այնորիկ

[1]Եբր. Ամպարշտութիւնք [2]Եբր. տացէ նմա գլորել յաւուր յորում դառնայցէ յանօրէնութենէ

[3]Եբր. կեալով [4]Եբր. մեռանելով [5]Եբր. ասէքն [6]Եբր. զերծելոյն [7]Եբր. մինչև եկն առ իս [8]Ց Եբր. պակասէ [9]Եբր. Կացէք ապաստան ի սուր ձեր։

տաս զնոսա, Այսպէս ասէ Տէր Տէր.
կենդանի եմ ես [1]Տէր, եթէ ոչ որ յա-
ւերակսն իցեն՝ սրով անկցին, եւ որ ընդ
երեսս դաշտին իցեն՝ գազանաց [2]անա-
պատի տացին" ի կերակուր, եւ որ ընդ
պարսպօքն եւ յայրս իցեն՝ մահու [3]կո-
28 տորեսցին. Եւ տաց զերկիրն յաւերակ
եւ յապականութիւն, եւ կորիցէ հպար-
տութիւն զօրութեան նորա. եւ աւե-
րեսցին լերինք Իսրայէլի, զի մի՛ ոք ի-
29 ցէ որ գնայցէ ընդ նոսա։ Եւ ծանիցեն
թէ ես եմ Տէր, [4]եւ արարից զերկիր
նոցա աւերակ, եւ աւերեսցի" վասն ա-
մենայն պարշելեաց իւրեանց զոր ա-
րարին։
30 Եւ դու, որդի մարդոյ, որդիք ժո-
ղովրդեան քո շրջին քրթմնջեն զքէն առ
պարսպօքն եւ ի դրունս տաճարացն,
եւ ասեն մի ցմի՝ այր ցեղբայր իւր, ժո-
ղովեցուք երթիցուք լուիցուք զպատ-
31 գամն որ ելին ի Տեառնէ։ Եւ գան
առ քեզ որպէս [5]ժողովեալք ի ժողո-
վուրդ, եւ նստին առաջի քո" ժողո-
վուրդն իմ լսել զբանս քո, եւ ոչ առ-
նեն զնոսա. զի [6]ստութիւն է ի բերանս
նոցա, եւ զհետ պղծութեան իւրեանց
32 գնան սիրտք իւրեանց։ Եւ դու լինի-
ցիս" նոցա իբրեւ զձայն երգոյ քաղց-
րաբարբառ յօրինելոյ, եւ [7]լուիցեն զբանս
33 քո եւ ոչ արասցեն"։ Եւ յորժամ գայ-
ցէ, (ասասցեն, թէ Ահաւասիկ եհաս,)
ծանիցեն թէ մարգարէ գոյ ի մէջ
նոցա։

ԳԼ. ԼԴ

‘Առ հովիւսն Իսրայէլի"

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
2 Որդի մարդոյ, մարգարեաց ի վերայ հովու-
ուացդ Իսրայէլի, մարգարեաց եւ ա-
սասցես ցհովիւսդ, այսպէս ասէ Տէր
Տէր. [8]Ո՛ հովիւք" Իսրայէլի. միթէ հո-
վիւք զանձի՞նս արածեն. ո՞չ հովիւք
3 զխաշինս արածեն։ Արդ ահաւասիկ զկաթնդ
ուտէք, եւ զասրդ ագանիք, զպարարակն
զենուք, եւ զխաշինս ‘իմ ոչ արածէք։
4 Զտկարացեալն ոչ զօրացուցէք, եւ զհի-
ւանդացեալն ոչ բժշկեցէք, ‘զջարջա-
րեալն ոչ յանձանձեցէք," եւ զբեկեալն
ոչ պատեցէք, զմոլորեալն ոչ դարձու-
ցէք, եւ զկորուսեալն ոչ խնդրեցէք.
[9]զհաստահարութեան աշխատ արարէք"։
5 Եւ ցրուեցան խաշինք իմ, քանզի ոչ
գոյին նոցա հովիւք. եւ եղեն կերա-
կուր գազանաց անապատի, եւ ցրուե-
6 ցան։ Եւ մոլորեցան խաշինքն իմ ընդ
ամենայն լերինս եւ ընդ ամենայն բլուրս
բարձունս, եւ ընդ ամենայն երեսս երկ-
րի ցրուեցան խաշինքն իմ. եւ ոչ ոք
էր որ խնդրէր, եւ ոչ այն որ դարձու-
ցանէր։
7 Վասն այնորիկ, հովիւք, լուարուք
8 զպատգամս Տեառն. Կենդանի եմ ես
ասէ Ադոնայի Տէր ‘Տէր, եթէ ոչ փո-
խանակ զի եղեն խաշինք իմ յաւար, եւ
մատնեցան խաշինք իմ ի կերակուր գա-
զանաց անապատի, վասն զի ոչ գոյին
հովիւք, եւ ոչ խնդրեցին հովիւք զխա-
շինս իմ, եւ բուծին հովիւքն զանձինս
իւրեանց, եւ զխաշինս իմ ոչ արածէին.
9 Փոխանակ այնորիկ լուարուք, հովիւք,
10 զպատգամս Տեառն. Այսպէս ասէ Տէր
Տէր. Ահաւասիկ ես ի վերայ հովուացդ,
եւ պահանջեցից զխաշինս իմ ի ձեռաց
դոցա, եւ դադարեցուցից զդոսա յարա-
ծելոյ զխաշինս իմ, եւ ոչ եւս արածես-
ցեն [10]զնոսա. եւ փրկեցից զխաշինս իմ
[11]ի ձեռաց դոցա, եւ ոչ եւս եղիցին դո-
ցա ի կերակուր։
11 Զի այսպէս ասէ Տէր Տէր. Ահաւա-
սիկ ես ինքնին խնդրեցից զխաշինս իմ,
12 եւ այց արարից դոցա։ Զոր օրինակ
խնդրիցէ հովիւ զհօտ իւր՝ յաւուր յո-
րում իցէ ‘մէգ եւ մառախուղ" ի մէջ
խաշանց իւրոց վատնելոց, այնպէս
խնդրեցից զխաշինս իմ, եւ ժողովեցից
զնոսա յամենայն տեղեաց ուր ցրուե-
ցան ի նոսա յաւուր միգի եւ մառախ-
13 ղի։ Եւ հանից զնոսա յազգաց, եւ ժո-
ղովեցից զնոսա ի գաւառաց, եւ տա-
րայց զնոսա յերկիրն իւրեանց, եւ ա-
րածեցից զնոսա ի վերայ լերանց Իսրա-
յէլի եւ ի ձորս եւ յամենայն բնակու-
14 թեան երկրին. Յարօտս փափկութեան

[1] Յեբր. Եհովա [2] Եբր. տաց [3] Եբր. մեռանիցին
[4] Եբր. յառնել ինձ զերկիրն յաւեր և յանապատ
[5] Եբր. գայ ժողովուրդն, և նստին առաջի քո որպէս [6] Եբր. յօժարութիւն է ի բերան նոցա, իսկ ինքեանք գնան զհետ ցանկութեան սրտից իւրեանց։ (32) Եւ դու ես [7] Եբր. լսեն զբանս քո և ոչ առնեն [8] Եբր. Վա՜յ հովուացդ.

[9] Եբր. և բռնութեամբ իշխեցէք նոցա և անագորոյնութեամբ [10] Եբր. հովիւք զանձինս իւրեանց [11] Եբր. ի բերանոյ

արածեցից [1]զնոսա ի լերինն բարձու
Իսրայելի", եւ անդ եղիցին մակաղա-
տեղք նոցա , [2]անդ դադարեսցեն եւ անդ
հանգիցեն ի գրգութեան" բարութեանց
եւ յարօտս պարարտութեան արածես-
15 ցին ի վերայ լերանցն Իսրայելի ։ Ես ա-
րածեցից զխաշինս իմ, եւ ես հանգու-
ցից զնոսա , [3]եւ ծանիցեն թէ ես եմ
16 Տէր ։ Այսպէս" ասէ Տէր Տէր ․ Զկորու-
սեալն խնդրեցից եւ զմոլորեալն դար-
ձուցից , զբեկեալն պատեցից եւ
զվատեալն զօրացուցից , զգէրն եւ
զհզօրն [4]պահեցից, եւ արածեցից զնոսա
իրաւամբք ։
17 Եւ դուք , խաշինք իմ , այսպէս ասէ
Տէր Տէր ․ Ահաւասիկ ես [5]ոչխար առ
ոչխար դատեցայց , եւ խոյ ընդ խոյ"։
18 Զի՞նչ ձեզ բաւական զգեղեցիկ արօտն
[3]յառաւջագոյն արածել , այլ եւ զմնա-
ցեալ ճարակն ի ձէնջ առ ոտն կոտո-
րէիք , եւ զջուրն յստակ ըմպէիք , եւ
19 զմնացեալն առ ոտն պղտորէիք ։ Եւ խա-
շինք իմ զկոխան ոտից ձերոց ճարա-
կէին , եւ զջուրն պղտորեալ ի կճղա-
կաց ձերոց ըմպէին ։
20 Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր Տէր[6].
Ահաւասիկ ես դատեցայց ի մէջ հարուստ
21 եւ անաւագ ոչխարաց ․ Փոխանակ զի
կողամբք եւ ուսովք ձերովք զրթէիք ,
[3]եւ ոգորէիք" եւ եղջերովք ձերովք
խեթկէիք զամենայն անաւագն , եւ ի
բաց մերժէիք զնոսա , մինչեւ ցրուե-
22 ցան խաշինք իմ, Եւ փրկեցից զխաշինս
իմ, եւ ոչ եւս լինիցին ի յափշտակու-
23 թիւն , դատեցայց [7]խոյ առ խոյ"։ Եւ
կացուցից ի վերայ նոցա Հովիւ մի՝ զծա-
ռայ իմ զԴաւիթ , եւ նա հովուեսցէ զնո-
24 սա , նա եղիցի նոցա հովիւ ։ Եւ ես Տէր
եղէց նոցա յԱստուած , եւ Դաւիթ ծա-
ռայ իմ իշխան ի մէջ նոցա ․ ես Տէր
25 խօսեցայ ։ Եւ եդից ընդ [8]Դաւթի ուխտ
խաղաղութեան , եւ ապականեցից զգա-
զանս չարս յերկրէ , եւ բնակեսցեն յա-
նապատին [9]յուսով , եւ ննջեսցեն յան-
26 տառս ։ Եւ տաց նոցա շուրջ զլերամբ
իմով օրհնութիւն , եւ տաց [10]ձեզ անձ-
րեւ", եւ եղիցին անձրեւք օրհնութեան։
27 Եւ ծառք ագարակի տացեն զպտուղս
իւրեանց , եւ երկիր տացէ զզօրութիւն
իւր , եւ բնակեսցեն յերկրի իւրեանց
[9]յուսով խաղաղութեանց". եւ ծանիցեն
թէ ես եմ Տէր ի խորտակել իմ զլուծ
պարանոցի նոցա , եւ փրկեցից զնոսա
28 ի ձեռաց ծառայեցուցչաց իւրեանց ։ Եւ
ոչ եւս եղիցին յաւար ի մէջ ազգաց ,
եւ գազանք երկրի մի՛ եւս կերիցեն զնո-
սա ․ եւ բնակեսցեն [9]յուսով , եւ ոչ ոք
29 իցէ որ զարհուրեցուցանիցէ զնոսա ։ Եւ
կանգնեցից նոցա տունկ [11]խաղաղու-
թեան , եւ ոչ եւս վատնեսցին ի սովոյ ի
վերայ երկրի , եւ նախատինս յազգաց
30 ոչ եւս կրեսցեն ։ Եւ ծանիցեն թէ ես
Տէր Աստուած նոցա ընդ նոսա եմ , եւ
նոքա ժողովուրդ իմ՝ տունն Իսրայելի,
ասէ Տէր Տէր ։
31 Եւ դուք, խաշինք իմ , ոչխարք արօ-
տի իմոյ , մարդիկ էք , եւ ես Տէր Աս-
տուած ձեր , ասէ Տէր Տէր ։

## Գլ. ԼԵ

Ի վերայ Եդովմայեցւոցն ։"

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ ,
2 Որդի մարդոյ , դարձո զերեսս քո ի վե-
րայ լերինդ Սէիրայ , եւ մարգարէաց ի
3 վերայ դորա , Եւ ասասցես ցդա , Այս-
պէս ասէ Տէր Տէր ․ Ահաւասիկ ես ի վե-
րայ քո , լեառնդ Սէիր , եւ ձգեցից զձեռն
իմ ի քեզ , եւ տաց զքեզ յանապատ՝ եւ
4 աւերեսցիս ․ Եւ զքաղաքս քո յաւեր
դարձուցից , եւ եղիցիս աւերակ , եւ
ծանիցես թէ ես եմ Տէր ։
5 Փոխանակ զի եղեր ի թշնամութիւն
յաւիտենից , եւ [12]դարանակալ նստէիր
նենգութեամբ տանն Իսրայելի , ի ձեռն
թշնամեաց սրոյ ի ժամանակի նեղու-
թեան", ի ժամանակի անիրաւութեան
6 յետին վախճանի , Վասն այնորիկ կեն-
դանի եմ ես , ասէ Տէր Տէր , [13]եթէ ոչ
յարիւն մեղար", եւ արիւն հալածեսցէ
զքեզ , [14]եւ զարիւնն զոր ատեցեր՝ նոյն"
7 արիւն հալածեսցէ զքեզ։ Եւ տաց զլեառնդ
Սէիր յաւերակ եւ յանապատ , եւ կո-

---

[1]Եբր. զնոսա, եւ ի լերինս բարձունս Իսրայելի եղիցի արօտ նոցա [2]Եբր. յարօտս [3]Եբր. [illegible] [4]Եբր. կորուսից [5]Եբր. դատեցայց ի մէջ ոչխարի և ոչխարի, խոյոց եւ նոխազաց [6]Եբր. [illegible], ցնոսա [7]Եբր. ի մէջ ոչխարի եւ ոչխարի [8]Եբր. Նոսա [9]Եբր. յապահովս

[10]Եբր. անձրեւ ի ժամանակի իւրում [11]Եբր. անուանի [12]Եբր. մատնեցեր զորդիսն Իսրայելի ի սուր սուսերի ի ժամանակի նեղութեան նոցա [13]Եբր. զի արարեր զքեզ յարիւն [14]Եբր. այնու զի ոչ ատեցեր զարիւն

բունից ի գիմանէ [1]զմարդ եւ զանասուն.
8 Եւ լցից զլերինս վիրաւորօք քովք",
զբլուրս քո եւ զձորս քո, եւ յամենայն
[2]զաշտս քո վիրաւորեալք ի սրոյ անկ-
9 ցին ի քեզ։ Յաւիտենական աւերակս եդից
զքեզ. եւ քաղաքք քո ոչ եւս շինես-
ցին, եւ ծանիցեն թէ ես եմ Տէր։
10 Փոխանակ ասելոյդ՝ թէ Երկու ազգքն
եւ երկու աշխարհք իմ եղիցին, եւ ժա-
ռանգեցից զնոսա, (եւ Տէր անդ էր.)
11 վասն այնորիկ կենդանի եմ ես, ասէ
Տէր Տէր. եւ արարից ընդ քեզ ըստ
թշնամութեան քում, եւ ըստ նախան-
ձուն քում զոր արարեր ատել զնոսա,
եւ ծանուցայց [3]քեզ յորժամ դատեցայց
12 զքեզ. Եւ ծանիցես թէ ես եմ Տէր.
լուայ զձայն հայհոյութեանց քոց զի ա-
սէիր, թէ լերինք Իսրայելի աւերակք՝
13 մեզ տուեալ են ի կերակուր. Եւ մե-
ծաբանեցեր ի վերայ իմ բերանովք քովք,
եւ հնչեցէք առ իս զբանս ձեր, եւ ես
լուայ։
14 Այսպէս ասէ Տէր Տէր. Յուրախութիւն
ամենայն երկրի՝ արարից զքեզ յաւերակս։
15 Փոխանակ զի ուրախ եղեր ժառանգու-
թեան տանն Իսրայելի՝ զի ապականե-
16 ցաւ, Նոյնպէս արարից զքեզ. եւ եղի-
ցիս աւերակ, լեառնդ Սէիր, եւ ամե-
նայն [4]Իդումէա սատակեսցի", եւ ծանի-
ցեն թէ ես եմ Տէր [5]Աստուած նոցա"։

## ԳԼ. ԼԶ

[5]Ի վերայ լերանցն Իսրայելի։"

1 Եւ դու, որդի մարդոյ, մարգարեաց ի
վերայ լերանցն Իսրայելի, եւ ասասցես
ցլերինսն Իսրայելի, Լուարուք զպատ-
2 գամս Տեառն. Այսպէս ասէ Տէր Տէր.
Փոխանակ զի ասաց թշնամին ի վերայ
ձեր, Վաշ վաշ, [6]աւերակք յաւիտենից
3 ի ժառանգութիւն եղեն մեզ, վասն այ-
գորիկ մարգարեաց եւ ասասցես, Այս-
պէս ասէ Տէր Տէր. Փոխանակ զի [7]ե-
ղէք յանարգութիւն ամենայն ազգաց որ
շուրջ զձեւք են, եւ վտարանդի եղէք
ազգաց բազմաց," խօսք լեզուաց եւ
4 նախատինք ազգաց, վասն այգորիկ,

[1] Եբր. զոր անցանէն և դառնայն.(8)Եւ լցից զլերինս նորա վիրաւորօք նորա [2] Եբր. հեղեղատս [3] Եբր. ի նոսա [4] Եբր. Եդոմ [5] ՅԵբր. պակասէ [6] Եբր. բարձունք [7] Եբր. աւերեցին եւ կլին զձեզ շուրջանակի, լինել ձեզ ժառանգութիւն մնացորդաց ազգաց, եւ

լերինք Իսրայելի, լուարուք զպատգամս
Ադոնայի Տեառն. այսպէս ասէ Տէր
Տէր ցլերինս եւ ցբլուրս եւ ցխորս
եւ ցձորս եւ ցաւերակս ապականեալս
եւ ցքաղաքս լքեալս՝ որ եղեն յաւեր եւ
ի կոխումն մնացելոց ազգացդ որ շուրջ
5 զձեւք են. Վասն այդորիկ այսպէս ասէ
Տէր Տէր. Եթէ ոչ հրով բարկութեան
իմոյ խօսեցայց ի վերայ այլոց ազգացն,
եւ ի վերայ ամենայն Իդումայեցւոցն,
զի արարին զերկիրն իմ իւրեանց ի վտա-
րանդի. [8]ուրախութեամբ անարգեցին
զանձինս ապականել աւարաւ"։
6 Վասն այնորիկ մարգարեաց ի վերայ
երկրին Իսրայելի, եւ ասասցես ցլերինս
եւ ցբլուրս եւ ցձորս եւ ցդաշտս, Այս-
պէս ասէ Տէր Տէր. Ահաւասիկ ես նա-
խանձու իմով եւ բարկութեամբ խօսե-
ցայ, փոխանակ կրելոյն ձերոյ նախա-
7 տինս ի հեթանոսաց։ Վասն այնորիկ
այսպէս ասէ Ադոնայի Տէր. Ամբարձի
զձեռն իմ ի վերայ ազգացդ որ շուրջ
զձեւքդ են, նոքա ընկալցին զանար-
8 գանս իւրեանց։ Բայց [9]ձեր, լերինքդ
Իսրայելի, զխաղող եւ զպտուղս կե-
րիցէ ժողովուրդ իմ Իսրայէլ, զի ակն
9 ունին գալոյ։ Ահաւասիկ ես հայե-
ցայց ի ձեզ, եւ արկանիցիք ի գործ, եւ
10 սերմանիցիք". Եւ բազմացուցից ի ձեզ
մարդիկ, համօրէն զտունն Իսրայելի
ի սպառ. եւ բնակեսցին քաղաքք, եւ
11 աւերակք շինեսցին։ Եւ բազմացուցից
ի ձեզ զմարդ եւ զանասուն, բազմաս-
ցին եւ աճեսցեն, եւ բնակեցուցից զձեզ
որպէս ի սկզբանէն, եւ բարի արարից
ձեզ [10]որպէս եւ յառաջագոյն", եւ ծանի-
12 ջիք թէ ես եմ Տէր։ Եւ [11]տիրեցուցից
ձեզ" մարդիկ՝ զժողովուրդն իմ Իսրա-
յէլ. եւ ժառանգեսցեն զձեզ, եւ եղիջիք
նոցա ի բնակութիւն, եւ ոչ եւս [12]լինի-
ցիք անզաւակ ի նոցանէն"։
13 Այսպէս ասէ Տէր Տէր. Փոխանակ զի
ասացին ցքեզ՝ թէ Երկիր մարդակեր ես

[8] Եբր. ուրախութեամբ ամենայն սրտի, արհամարհանօք անձին վասն մատնելոյ զնա յաւար [9] Եբր. դուք, լերինք Իսրայելի, զբարունակս ձեր արձակիցէք, և զպտուղս ձեր բերիցէք ժողովրդեան իմում Իսրայելի. զի մերձ են գալ. (9)Զի ահաւասիկ ես առ ձեզ եմ, եւ ի ձեզ դարձայց, եւ մշակեսջիք եւ սերմանեսջիք [10] Եբր. առաւել քան զառաջինն [11] Եբր. գնացուցից ի վերայ ձեր [12] Եբր. յաւելուցուք անզաւակեցուցանել զնոսա

դու, եւ [1]անզաւակ յազգէ քումմէ" ե-
14 ղեր, Վասն այնորիկ ոչ եւս լինիցիս
մարդակեր, եւ զազգդ քո անզաւակ ոչ
15 եւս արասցես, ասէ Տէր Տէր։ Եւ [2]ա-
նարգանք ազգաց ի ձեզ ոչ եւս լինի-
ցին", եւ նախատինս ի ժողովրդոց այլ
ոչ եւս կրեսցես, եւ [3]ազգդ քո այլ ոչ
եւս [4]անզաւակեսցի, ասէ Տէր Տէր։
16 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
17 Որդի մարդոյ, տունդ Իսրայէլի բնա-
կեցին յերկրին իւրեանց, եւ պղծեցին
զնա ճանապարհօք իւրեանց եւ [5]կռովք
իւրեանց եւ պղծութեամբք" իւրեանց.
ըստ պղծութեան դաշտանի եղեւ ճա-
18 նապարհ դոցա առաջի իմ։ Եւ հեղի
զսրտմտութիւն իմ ի վերայ դոցա վասն
արեանն զոր հեղին յերկրին, եւ կռովք
19 իւրեանց պղծեցին զնա. Եւ ցրուեցի
զդոսա ընդ ազգս, եւ [6]հոսեցի զդոսա"
ընդ գաւառս. ըստ ճանապարհաց դո-
ցա, եւ ըստ [7]մեղաց իւրեանց դատեցայ
20 զդոսա։ Եւ մտին յազգս, ուր մտինն՝
եւ անդ պղծեցին զանուն իմ սուրբ,
յասելն ցնոսա թէ ժողովուրդ Տեառն
21 են դոքա, եւ յերկրէն նորա ելին։ Եւ
խնայեցի [8]ի դոսա վասն անուան իմոյ
սրբոյ", զոր պղծեցին տունդ Իսրայէլի
ի մէջ ազգացդ յոր մտին ի նոսա։
22 Վասն այդորիկ ասա ցտունդ Իսրա-
յէլի, Այսպէս ասէ Տէր Տէր. ոչ [9]ձեզ
ինչ առնեմ", տունդ Իսրայէլի, այլ վասն
անուան իմոյ սրբոյ զոր պղծեցէք ի մէջ
23 ազգացդ յորս մտէք ի դոսա։ Եւ սրբե-
ցից զանուն իմ մեծ որ պղծեցաւ ի մէջ
ազգացդ՝ զոր դուք պղծեցէք ի մէջ դո-
ցա. եւ ծանիցեն ազգքդ եթէ ես եմ
Տէր, ասէ Ադոնայի Տէր, ի սրբելն ի-
24 մում ի ձեզ յանդիման դոցա։ Եւ առից
զձեզ ի հեթանոսաց, եւ ժողովեցից
զձեզ յամենայն ազգաց, եւ տարայց
25 զձեզ յերկիրն ձեր։ Եւ ցանեցից ի վե-
րայ ձեր ջուր սուրբ, եւ սրբեսջիք.
յամենայն պղծութեանց ձերոց, եւ յա-
26 մենայն կռոց ձերոց սրբեցից զձեզ. Եւ
տաց ձեզ սիրտ նոր, եւ ոգի նոր [10]նո-
րոգեցից ի ձեզ, եւ հանից զսիրտն քա-
րեղէն ի մարմնոց ձերոց, եւ տաց ձեզ
27 սիրտ մարմնեղէն. Եւ զՈգի իմ տաց
ձեզ, եւ արարից՝ զի յարդարութիւնս
իմ գնասջիք, եւ զիրաւունս իմ պահի-
28 ցէք եւ առնիցէք զնոսա. Եւ բնակիցէք
յերկրին զոր ետու հարցն ձերոց, եւ
դուք եղիջիք ինձ ի ժողովուրդ եւ ես
29 եղէց ձեզ յԱստուած։ Եւ զերծուցից
զձեզ յամենայն պղծութեանց ձերոց, եւ
կոչեցից զցորեան եւ բազմացուցից զնա,
30 եւ ոչ ածից ի վերայ ձեր սով։ Եւ բազ-
մացուցից զպտուղ ծառոց, եւ զարդիւնս
անդոց, զի մի եւս ընդունիցիք զնա-
31 խատինս սովոյ ի մէջ ազգաց։ Եւ յիշես-
ջիք զճանապարհսն ձեր չարս եւ զգնացս
ձեր զանպիտանս. եւ տաղտկասջիք [11]յե-
րեսաց անօրէնութեանցն ձերոց եւ [12]ի
32 գարշելեացն ձերոց։ Ոչ վասն ձեր ինչ
առնեմ զայս, ասէ Տէր Տէր, այլ յայտնի
լիցի ձեզ. ամաչեցէք եւ պատկառեցէք
ի ճանապարհաց ձերոց, տունդ Իսրայէլի։
33 Այսպէս ասէ Տէր Տէր. Յաւուր յո-
րում սրբեցից զձեզ յամենայն անօրէ-
նութեանց ձերոց, եւ շինեսցին աւե-
34 րակք, եւ բնակեցուցից զքաղաքս. Եւ
երկիրն ապականեալ՝ գործեսցի, փոխա-
նակ զի ապականեցաւ յանդիման ամե-
35 նայն անցաւորաց։ Եւ ասասցեն, Եր-
կիրն ապականեալ եղեւ իբրեւ զպար-
տէզ [13]փափկութեան, եւ քաղաքքն ա-
ւերակք, ապականեալք եւ քանդեալք՝
36 ամրացեալք նստան։ Եւ ծանիցեն ազգք
որ միանգամ շուրջ զձեւք մնացեալք ի-
ցեն, թէ ես եմ Տէր, որ շինեցի զա-
ւերեալսն, եւ հաստատեցի զապակա-
նեալսն, ես Տէր խօսեցայ, եւ արարից։
37 Այսպէս ասէ Տէր Տէր. [14]Զայս եւս
այց արարից տանդ" Իսրայէլի առնել
դոցա, բազմացուցից զմարդիկ դոցա
38 իբրեւ զխաշինս։ Իբրեւ զոչխարս սուրբս,
իբրեւ զոչխարս Երուսաղեմի ի տօնս
իւրեանց, այնպէս եղիցին քաղաքքն
աւերեալք՝ լի խաշամբք մարդկան, եւ
ծանիցեն թէ ես եմ Տէր։

ԳԼ. ԼԷ

[15]Վասն Յարութեան։"

1 Եւ եղեւ ի վերայ իմ ձեռն Տեառն, եւ
եհան զիս Հոգւովն Տեառն, եւ եդ զիս

[1] Եբր. անզաւակեցուցիչ ազգաց քոց [2] Եբր. ոչ եւս տաց լսել ի քեզ զանարգանս ազգաց [3] Եբր. զազգդ [4] Եբր. անզաւակեսցես [5] Եբր. գործովք [6] Եբր. հոսեցան [7] Եբր. գործոց [8] Եբր. անուան իմում սրբոյ [9] Եբր. վասն ձեր առնեմ զայս [10] Եբր. տաց

[11] Եբր. յերեսաց ձերոց վասն [12] Եբր. վասն գար-շելեացն [13] Եբր. Եդեմայ [14] Եբր. Վասն այսր եւս խնդրեցայց ի տանէդ [15] Յեբր. պակասէ

ի մէջ դաշտին, եւ այն լի էր ոսկերօք
2 մարդկան. Եւ շրջեցոյց զիս շուրջ զոս-
կերօքն, եւ ահա բազում յոյժ էին ի վե-
րայ երեսաց դաշտին, եւ ցամաքեալք
յոյժ։
3 Եւ ասէ ցիս, Որդի մարդոյ, իցէ՞ թէ
կենդանի լինիցին ոսկերքս այսոքիկ. եւ
4 ասեմ, Տէր Տէր, դու գիտես զայդ։ Եւ
ասէ ցիս, [1]Որդի մարդոյ,˵ մարգարեաց
ի վերայ ոսկերացդ այդոցիկ եւ ասաս-
ցես ցդոսա, Ոսկերք ցամաքեալք, լուա-
5 րուք զպատգամս Տեառն. Այսպէս ասէ
Տէր Տէր ցոսկերսդ ցայդոսիկ. Ահաւա-
սիկ ես ածից ի վերայ ձեր շունչ [2]կեն-
6 դանի. Եւ տաց ի ձեզ ջիղս, եւ ածից
ի վերայ ձեր մարմինս, եւ ձգեցից ի վե-
րայ ձեր մորթ, եւ տաց զոգի [1]իմ ի
ձեզ, եւ լինիջիք կենդանի, եւ ծանի-
ջիք թէ ես եմ Տէր։
7 Եւ մարգարէացայ որպէս եւ հրաման
ետ ինձ Տէր։ Եւ եղեւ բարբառ ի մար-
գարէանալն իմում, եւ ահա շարժումն.
եւ մերձեցաւ ոսկր առ ոսկր առ իւրա-
8 քանչիւր յօդս։ Եւ տեսի եւ ահա [3]ջիղք
եւ մարմինք պատէին, եւ ձգէր ի վե-
րայ նոցա մորթ[4], եւ շունչ ոչ գոյր ի
9 նոսա։ Եւ ասէ ցիս, Մարգարեաց, որ-
դի մարդոյ, մարգարեաց [5]ի վերայ շնչոյն˵,
եւ ասասցես ցշունչն, Այսպէս ասէ Տէր
Տէր. Եկ, շունչ, ի չորից հողմոց, եւ
փչեա ի մեռեալս յայսոսիկ եւ կեցցեն։
10 Եւ մարգարէացայ որպէս եւ հրաման
ետ ինձ Տէր. եւ եմուտ ի նոսա շունչն,
եւ եղեն կենդանի. եւ կանգնեցան կա-
ցին ի վերայ ոտից իւրեանց, ժողովուրդ
բազում յոյժ յոյժ։
11 Եւ խօսեցաւ ընդ իս Տէր եւ ասէ,
Որդի մարդոյ, ոսկերքդ այդոքիկ՝ ամե-
նայն տունդ Իսրայելի է. եւ դոքա ա-
սեն, Չորացան ոսկերք մեր, հատաւ
12 յոյս մեր եւ մեռաք։ Վասն այդորիկ
մարգարեաց եւ ասասցես ցդոսա, Այս-
պէս ասէ Տէր Տէր. Ահաւադիկ ես բա-
ցից՝ զգերեզմանս ձեր, եւ հանից զձեզ
ի գերեզմանաց ձերոց, ժողովուրդ իմ,
եւ տարայց զձեզ յերկիրն Իսրայելի։
13 Եւ ծանիջիք եթէ ես եմ Տէր, ի բա-
նալ ինձ զգերեզմանս ձեր եւ հանել զձեզ
ի գերեզմանաց ձերոց, ժողովուրդ իմ։

[1] Յեբր. պակասէ [2] Եբր. եւ կենդանասջիք [3] Եբր. ջիղք ի վերայ նոցա [4] Եբր. պատեցին զնոսա, ի վերուստ [5] Եբր. առ շունչն

14 Եւ տաց զոգի իմ ի ձեզ, եւ լինիջիք
կենդանի. եւ [6]եդից զձեզ յերկրին ձերում,
եւ ծանիջիք թէ ես եմ Տէր. եւ խօսե-
ցայ եւ արարի, ասէ Տէր [1]Տէր։
15 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
16 Եւ դու որդի մարդոյ, առ դու քեզ գա-
ւազան մի, եւ գրեա ի նմա զՅուդա եւ
զորդիսն Իսրայելի զմերձաւորս նորա.
եւ առցես քեզ գաւազան երկրորդ, եւ
գրեսցես ի նմա զՅովսէփ, զգաւա-
զանն Եփրեմի, եւ զամենայն որդիսն
17 Իսրայելի զյաւելեալսն ի նոսա. Եւ կցես-
ցես զնոսա ընդ միմեանս [1]կապեալ՝ լի-
նել ի գաւազան մի, եւ եղիցի ի ձեռին
18 [7]քում։ Եւ եղիցի յորժամ ասասցեն ցքեզ
որդիք ժողովրդեան քո, Ո՞չ պատմես
19 մեզ զինչ է այդ իքեզ, Ասասցես ցնոսա,
Այսպէս ասէ Տէր Տէր. Ահաւասիկ ես
առից [8]զազգդ Յովսէփու որ է ի ձեռին
Եփրեմայ, եւ զազգդ Իսրայելի զմեր-
ձաւորս զորա, եւ [9]տաց զդոսա յազգն
Յուդայ, եւ եղիցին˵ ի մի գաւազան.
20 եւ եղիցին մի ի ձեռին [10]Յուդայ։ Եւ ե-
ղիցին գաւազանքդ յորս դու գրեցեր՝ ի
21 ձեռին քում առաջի նոցա։ Եւ ասաս-
ցես ցնոսա, Այսպէս ասէ Տէր Տէր. Ա-
հաւադիկ ես առնում զտունդ Իսրայելի
ի միջոյ ազգաց յորս մտին ի նոսա, եւ
ժողովեցից զդոսա յամենայն ազգաց որ
շուրջ զդոքօք են, եւ տարայց զդոսա
22 յերկիրն [11]Իսրայելի. Եւ տաց˵ զդոսա
յազգ մի յերկրին [1]իմում ի լերինսն Իս-
րայելի, եւ մի իշխան եղիցի ի վերայ
ամենեցուն դոցա ի թագաւոր. եւ ոչ
եւս եղիցին յերկուս ազգս, եւ ոչ եւս
բաժանեսցին յերկուս թագաւորութիւնս։
23 [12]Զի մի՛ եւս պղծեսցին ի կուռս իւրեանց
եւ ի գարշելիս իւրեանց եւ յամենայն ամ-
պարշտութիւնս իւրեանց. եւ փրկեցից
զդոսա յամենայն [13]անօրէնութեանց դո-
ցա զոր˵ մեղան ի նոսա, եւ սրբեցից
զդոսա, եւ եղիցին ինձ ի ժողովուրդ,
24 եւ ես եղէց դոցա յԱստուած։ Եւ ծա-
ռայ իմ Դաւիթ՝ [14]իշխան ի մէջ˵ դոցա,
եւ մի հովիւ եղիցի ամենեցուն դոցա.
[12]զի ըստ հրամանաց իմոց գնասցեն, եւ

[6] Եբր. հանգուցից [7] Եբր. քում մի։ [8] Եբր. զգաւազանդ [9] Եբր. եդից զնոսա ընդ նմա, ընդ գաւազանին Յուդայ, եւ արարից զնոսա [10] Եբր. իմում [11] Եբր. իւրեանց. (22) Եւ արարից [12] Եբր. Եւ [13] Եբր. բնակութեանց (կամ, ուխտազանցութեանց) նոցա յորս [14] Եբր. թագաւոր ի վերայ

գիրաւունս իմ պահեսցեն եւ արասցեն
25 զնոսա ։ Եւ բնակեսցեն յերկրին իւրեանց
զոր ետու ես ծառային իմում Յակոբայ
ուր բնակեցին հարք [1]իւրեանց ․ եւ բնա-
կեսցեն դոքա ի նմա , եւ որդիք դոցա
եւ որդիք որդւոց դոցա մինչեւ յաւի-
տեան ․ եւ Դաւիթ ծառայ իմ եղիցի իշ-
26 խան դոցա յաւիտեան ։ Եւ եդից դոցա
ուխտ խաղաղութեան , ուխտ յաւիտե-
նական եղիցի ընդ դոսա ․ եւ *տաց զդո-
ցա" եւ բազմացուցից զդոսա , եւ եդից
զսրբութիւնս իմ ի մէջ դոցա յաւիտ-
27 եան ։ Եւ եղիցի [2]բնակութիւն իմ ի դո-
սա , եւ եղէց դոցա յԱստուած , եւ դո-
28 քա եղիցին ինձ ի ժողովուրդ ։ Եւ ծանի-
ցեն ազգք թէ ես եմ Տէր որ [3]սրբեցի
զդոսա", ի լինել սրբութեանց իմոց ի
միջի դոցա յաւիտեան ։

## ԳԼ. ԼԸ

[4]Ի վերայ Գովգայ եւ Մագովգայ ։"

1 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ ,
2 Որդի մարդոյ , հաստատեա զերեսս քո
ի վերայ Գովգայ , երկրին Մագովգայ ,
իշխանին [5]Ռովմեսովքայ եւ Թոբելայ ,
3 եւ մարգարեաց ի վերայ նորա , Եւ ա-
սասցես զնա , Այսպէս ասէ Տէր Տէր ․
Ահաւասիկ ես ի վերայ քո , [6]իշխանդ
4 Ռովմեսովքայ եւ Թոբելայ ․ Եւ պա-
շարեցից" զքեզ , եւ արկից դանդանա-
ւանդ ի կզակս քո , եւ [7]ժողովեցից զքեզ
եւ զամենայն զօրութիւնս քո , զհե-
ծեալս եւ զերիվարս , զվառեալս եւ
զսպառազէնս ազգաց բազմաց , վահա-
նաւորս եւ սաղաւարտաւորս եւ սուսե-
5 րաւորս ․ Եւ ամենեքին սոքա ընդ նո-
սա , Պարսիկք եւ Եթէովպացիք ․ [8]Լի-
բէացիք եւ Լիդացիք", ամենեքին սա-
6 ղաւարտեալք եւ վահանաւորք ․ Գոմեր
եւ ամենեքին որ շուրջ են զնովաւ , եւ
տունն Թորգոմայ ի ծագացն հիւսիսոյ ,
եւ ամենեքին որ շուրջ զնովաւ , եւ
ազգք բազումք ընդ քեզ ։
7 Պատրաստեաց , պատրաստեա զանձն
քո , դու եւ ամենայն ժողովք որ ժողովեալ
են ընդ քեզ , եւ եղիցես [9]ինձ յառա-
8 ջապահ ։ Յետ աւուրց բազմաց [10]պատ-
րաստեսցի , ի վախճան ժամանակաց ե-
կեսցէ եւ հասցէ" յերկիրն յապահով ի
սրոյ ․ ժողովեալ յազգաց բազմաց [11]յեր-
կիրն Իսրայելի , որ եղեւ աւերակ հա-
մօրէն , եւ նոյն յազգաց ժողովեալ՝ եւ
բնակեն խաղաղութեամբ" ամենեքին ։
9 Եւ ելցես իբրեւ [12]զանձրեւ , եւ հասցես
իբրեւ զամպ եւ ծածկեսցես զերկիրն ․ եւ
եղիցես դու եւ ամենայն ազգք բազումք՝
որ շուրջ զքեւ իցեն ընդ քեզ ։
10 Այսպէս ասէ Տէր Տէր ․ Եւ եղիցի յա-
ւուր յայնմիկ անկանիցին բանք ի սիրտ
11 քո , եւ խորհեսցիս խորհուրդս չարս ․ Եւ
ասասցես , Ելից ի վերայ յապահով երկ-
րին , հասից ի վերայ հանդարտելոցն
յանհոգութեան , բնակելոցն ի խաղա-
ղութեան , ամենեցուն որ բնակեալ են
յերկրին , որոց ոչ պարիսպք եւ ոչ նիգք
12 եւ ոչ դրունք , Աւարել զաւար , կողոպ-
տել զկապուտ նոցա , արկանել զձեռն
[13]իմ ի վերայ երկրին աւերելոյ եւ բնա-
կելոյ , եւ ի վերայ ազգին ժողովելոյ
յազգաց բազմաց , ստացելոց ինչս եւ
[14]զստացուածս , բնակելոց ի սիրտ երկ-
13 րի ։ Սաբա եւ Դեդան եւ վաճառականք
[15]Կարքեդոնացւոց եւ ամենայն աւանք"
նորա ասիցեն ցքեզ , Յաւ յաւա՞ր ար-
շաւեալ գաս ․ ժողովեցեր զժողովս քո
[16]առնուլ զարծաթ եւ զոսկի , վարել ի
գերութիւն զստացուածս" եւ կողոպտել
զկապուտ մեծ ։
14 Վասն այնորիկ մարգարեաց , որդի
մարդոյ , եւ ասասցես ցԳովգ , Այսպէս ասէ
Տէր Տէր ․ Ո՞չ ապաքէն յաւուր յայնմիկ
յորում բնակեսցէ ժողովուրդ իմ Իսրա-
15 յէլ խաղաղութեամբ՝ [17]զարթիցես , Եւ
եկեսցես ի տեղւոջէ քումմէ ի ծագաց
հիւսիսոյ , դու եւ բազում ազգք ընդ
քեզ հեծեալ յերիվարս , ամենեքին ընդ
16 գունդս բազումս զօրաց բազմաց ․ Եւ
ելանիցես ի վերայ ժողովրդեան իմոյ Իս-
րայելի՝ իբրեւ զամպ ծածկել զերկիրն ․
ի յետին ժամանակի եղիցի այն ․ եւ ա-
ծից զքեզ յերկիր իմ , զի ծանիցեն զիս

[1] Եբր. ձեր *Եբր. եդից զդոսա [2] Եբր. խորան [3] Եբր. սրբեմ զԻսրայէլ [4] Եբր. պակասէ [5] Եբր. Ռոսայ, Մոսոքայ [6] Եբր. Գովգ, իշխան Ռոսայ, Մոսոքայ, և Թոբելայ . (4)* Եւ դարձուցից [7] Եբր. հանից [8] Եբր. Փուդացիք [9] Եբր. Նոցա

[10] Եբր. եղիցի քեզ հանդէս․ ի վախճան ժամանակաց եկեսցես [11] Եբր. ի լերինս Իսրայելի , որ էին աւերակ համօրէն, և ազատեալք յազգաց բնակեսցեն յապահովս [12] Եբր. զմրրիկ [13] Եբր. քո [14] Եբր. խաշինս [15] Եբր. Թարսիս եւ ամենայն կորիւնք առիւծուց [16] Եբր. կապտել կապո՞ւտ, բառնալ զարծաթ և զոսկի, առնուլ խաշինս եւ վաճառս [17] Եբր. գիտասցես

ամենայն ազգք. ի յայտնել իմ սուրբ ի
միջի քում առաջի նոցա, Գոգ։
17 Այսպէս ասէ Տէր Տէր ցԳոգ. Դո՞ւ ես
վասն որոյ խօսեցայ յաւուրցն առաջնոց
ի ձեռն ծառայիցն իմոց մարգարէիցն Իս-
րայէլի[1] յաւուրսն յայնոսիկ եւ յամսն,
18 ածել զքեզ ի վերայ նոցա։ Եւ եղիցի
յաւուր յայնմիկ յորում եկեսցէ Գոգ ի
վերայ երկրին Իսրայէլի, ասէ Տէր Տէր,
ելցէ սրտմտութիւն իմ բարկութեամբ.
19 Եւ ի նախանձ իմ՝ հրով բարկութեան ի-
մոյ խօսեցայ, եթէ ոչ՝ յաւուր յայնմիկ
եղիցի շարժումն մեծ ի վերայ երկրին
20 Իսրայէլի։ Եւ խռովեսցին յերեսաց իմոց
ձկունք ծովու եւ թռչունք երկնից եւ
գազանք դաշտաց, եւ ամենայն սողունք
երկրի, եւ ամենայն մարդիկ որ ի վե-
րայ երեսաց երկրի. լերինք պատառես-
ցին, եւ [2]ձորք տապալեսցին, եւ ամե-
նայն պարիսպք երկրին կործանեսցին։
21 Եւ կոչեսցեմ [3]զահ սրոյ ի վերայ նորա",
ասէ Տէր Տէր. սուր առն ի վերայ եղ-
22 բօր իւրոյ լինիցի։ Եւ դատեցայց զնա
արեամբ եւ մահու, եւ հեղեղօք անձ-
րեւաց եւ վիմօք կարկտի եւ հուր եւ
ծծումբ տեղացից ի վերայ նորա, եւ ի
վերայ [4]ամենեցուն որ ընդ նմա իցեն",
եւ ի վերայ ազգաց բազմաց որ ընդ նմա։
23 Եւ մեծացայց եւ սուրբ եղէց, [5]եւ փա-
ռաւորեցայց" եւ ծանուցայց առաջի
ազգաց բազմաց, եւ ծանիցեն թէ ես եմ
Տէր։

## ԳԼ. ԼԹ

1 Եւ դու, որդի մարդոյ, մարգարեաց ի
վերայ Գոգայ եւ ասասցես, Այսպէս
ասէ Տէր Տէր. Ահաւասիկ ես ի վերայ
քո, Գոգ՝ իշխանդ [6]Ռոսմոսոքայ եւ
2 Թոբելայ. Եւ ժողովեցից" զքեզ եւ ա-
ռաջնորդեցից քեզ, եւ հանից զքեզ ի
ծագաց հիւսիսոյ, եւ ածից զքեզ ի վե-
3 րայ լերանցն Իսրայէլի։ Եւ [7]կորուսից
զաղեղն քո ի ձախմէ ձեռանէ քումմէ,
եւ զնետս քո յաջմէ ձեռանէ [8]քումմէ,
4 եւ կործանեցից զքեզ ի վերայ լերանցն
Իսրայէլի, եւ" անկանիցիս դու եւ ա-
մենեքին որ ընդ քեզ իցեն, եւ ազգքն որ ընդ
քեզ [9]իցեն՝ մատնեսցին ի կերակուր հա-
ւուց եւ ամենայն թռչնոց," եւ ամենայն
գազանաց անապատի ետու զքեզ ի կե-
5 րակուր. Ընդ երեսս դաշտին անկցիս,
6 զի ես խօսեցայ, ասէ Տէր Տէր։ Եւ ա-
ռաքեցից հուր ի վերայ Մագովգայ, եւ
[10]բնակեսցին կղզիք" ի խաղաղութեան,
7 եւ ծանիցեն թէ ես եմ Տէր։ Եւ ա-
նուն իմ սուրբ ծանիցի ի մէջ ժողո-
վրդեան իմոյ Իսրայէլի, եւ մի՛ եւս
պղծեսցի անուն իմ սուրբ. եւ ծանի-
ցեն [5]ամենայն ազգք երկրի թէ ես եմ
8 Տէր, Սուրբն Իսրայէլի։ Ահաւասիկ հա-
սեալ է, եւ [5]ծանիցես թէ" լինիցի, ա-
սէ Տէր Տէր. այս է օրն զորմէ խօսե-
9 ցայ։ Եւ ելցեն բնակիչք քաղաքաց Իս-
րայէլի, [11]եւ այրեսցեն զզէնս, զնիզա-
կաբեկս, զասպարաբեկս, զնետս, զբեկորս
աղեղանց, զտիգաբուռնս, զբունակոթս, եւ
այրեսցեն իւրեանց այրելիս եւթն ամի։
10 Եւ մի՛ առցեն փայտ ի վայրաց, եւ մի՛ հատ-
ցեն փայտ յանտառաց, այլ զզէնսն այ-
րեսցեն ի կրակի. եւ առցեն յաւարի
զաւարառուս իւրեանց, եւ կողոպտես-
ցեն զկողոպտիչս իւրեանց, ասէ Տէր
Տէր։
11 Եւ եղիցի յաւուր յայնմիկ տաց Գոգ-
գայ տեղի [12]անուանի գերեզման յԻսրա-
յէլի, զչիրիմ եկելոցն ի կողմանց ծո-
վուն, եւ շինեսցեն շուրջ զափամբք
ձորոյն" եւ թաղեսցեն անդ զԳոգ եւ
զամենայն ժողովս նորա, եւ [13]կոչեսցի
12 Գեհ գերեզման" Գոգայ։ Եւ թաղեսցեն
զնոսա տունն Իսրայէլի, զի սրբեսցի
13 երկիրն, զեւթն ամիս։ Եւ թաղեսցեն
զնոսա ամենայն ժողովուրդք երկրին.
եւ եղիցի նոցա անուանի օրն յորում
14 փառաւորեցայց, ասէ Տէր Տէր։ Եւ արս
նմին իրի զումարեսցեն երթալ շրջել ընդ
երկիրն, եւ [14]թաղել զմնացորդս ի վերայ
երեսաց երկրին [15]եւ սրբել զնա յետ եւթն
15 ամսոյ։ Եւ խնդրեսցէ ամենայն որ" ան-
ցանիցէ ընդ երկիրն, եւ յորժամ տե-
սանիցէ ոսկր մարդոյ՝ շինեսցէ առ նո-

[1] Եբրայեցին յաւելու, որ մարգարէանային [2] Եբր. բարձունք [3] Եբր. ի վերայ նորա, յամենայն լերինս իմ, սուր [4] Եբր. գնդից նորա [5] Յեբր. պակասէ [6] Եբր. Ռոսայ, Մոսոքայ եւ Թոբելայ. (2) Եւ դարձուցից [7] Եբր. հանից [8] Եբր. քումմէ ընկեցից. (4) Ի վերայ լերանցն Իսրայէլի

[9] Եբր. իցեն. գիշակեր թռչնոց ամենայն ազգի [10] Եբր. բնակելոց ի կղզիս [11] Եբր. եւ հուր հարցեն եւ [12] Եբր. անդ ի գերեզման յԻսրայէլի, զձորն անցաւորաց յարեւելս ծովուն. եւ արգելցէ զանցաւորսն, [13] Եբր. կոչեսցեն զնա Ձոր բազմութեան [14] Եբր. թաղել հանդերձ անցաւորօք [15] Եբր. սրբել զնա.. յետ եւթն ամսոց խուզեսցեն։ (15) Որ

վաս նշանակ ինչ, մինչեւ թաղեսցեն
զայն որք թաղեն [1]ի Գեհ ի գերեզմա-
16 նին՝ Գոմգայ։ Զի եւ անուն քաղաքին
[2]Գերեզման կոչեսցի, եւ սրբեսցի երկիրն։
17 Եւ դու, որդի մարդոյ, այսպէս ասէ
Տէր Տէր. Ասա ամենայն հաւուց թռչունս
եւ ամենայն գազանս դաշտի, ժողո-
վեցարուք եւ եկայք, ժողովեցարուք
յամենայն կողմանց երկրի ի զենումն իմ
զոր ես զենի ձեզ՝ զենումն մեծ ի վե-
րայ լերանցն Իսրայելի, կերայք միս եւ
18 արբէք արիւն. Կերայք զմիս հսկայից,
եւ արբէք զարիւն իշխանաց երկրին,
զխոյս եւ [3]զզուարակս եւ զնոխազս. զի
զուարակք պարարեալք են՝ ամենե-
19 քեան։ Եւ կերիջիք ճարպ յագ, եւ
արբջիք արիւն ցարբենալ ի զենլեաց ի-
20 մոց զոր զենի ձեզ։ Եւ յագեսջիք ի սե-
ղանոյ իմմէ, ի հեծելոց եւ յերիվարաց,
ի սկայից, եւ յամենայն արանց պատե-
21 րազմողաց, ասէ Տէր Տէր։ Եւ տաց
զփառս իմ [4]ի ձեզ, եւ տեսցեն ամենայն
ազգք զդատաստանս իմ զոր արարի,
եւ զձեռն իմ զոր ածի ի վերայ նոցա։
22 Եւ ծանիցեն տունն Իսրայելի՝ թէ ես եմ
Տէր Աստուած նոցա, յօրէ յայնմանէ եւ
23 առ յապայ։ Եւ ծանիցեն ամենայն ազգք,
թէ վասն մեղաց իւրեանց գերեցան
տունն Իսրայելի, փոխանակ զի անար-
գեցին զիս, [5]դարձուցի զերեսս իմ ի նո-
ցանէ, եւ մատնեցի զնոսա ի ձեռս թշնա-
մեաց իւրեանց, եւ անկան ամենեքեան
24 ի սուր։ Վասն պղծութեան նոցա եւ ա-
նօրէնութեանց նոցա արարի նոցա զայն,
եւ [6]դարձան երեսք՝ իմ ի նոցանէ։
25 Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր Տէր.
Արդ դարձուցից զգերութիւնն Յակո-
բայ, եւ ողորմեցայց *տանն Իսրայելի,
եւ նախանձեցայց վասն անուան ի-
26 մոյ սրբոյ։ Եւ ընկալցին զանարգանս
իւրեանց եւ զանիրաւութիւնն զոր ա-
նիրաւեցան[7], ի բնակեցուցանել զնոսա
յերկրին իւրեանց խաղաղութեամբ, եւ
27 ոչ ոք իցէ որ զարհուրեցուցանիցէ։ Ի
դարձուցանել ինձ զնոսա յազգաց, եւ
ժողովել զնոսա ի գաւառաց [8]հեթանո-
սաց, եւ սուրբ եղէց ի նոսա առաջի
28 [9]ազգաց։ Եւ ծանիցեն թէ ես եմ Տէր
Աստուած նոցա, [10]յերեւել ինձ նոցա ի
մէջ ազգաց՝. եւ ժողովեցից զնոսա յեր-
կիրն իւրեանց, եւ ոչ եւս թողից ի նո-
29 ցանէ ուրեք։ Եւ ոչ եւս [11]դարձուցից
զերեսս իմ ի նոցանէ, [12]փոխանակ հեղ-
լոյ զբարկութիւն՝ իմ ի վերայ տանն
Իսրայելի, ասէ Տէր Տէր։

## ԳԼ. Խ

[13]Վասն շինուածոյ Տաճարին։՝

1 Եւ եղեւ ի քսաներորդի եւ հինգերոր-
դի ամի գերութեան մերոյ, յամսեանն
առաջնում որ օր[14] մետասան էր ամսոյն,
ի չորեքտասաներորդի ամի առնլոյ քա-
ղաքին, յաւուր յայնմիկ եղեւ ի վերայ
2 իմ ձեռն [15]Տեառն։ Եւ ած զիս ի տես-
լեան Աստուծոյ յերկիրն Իսրայելի, եւ
եդ զիս ի վերայ լերին միոյ բարձու յոյժ.
եւ ի վերայ նորա իբրեւ զշինուած քա-
3 ղաքի [16]դէմ յանդիման՝։ Եւ տարաւ զիս
ի ներքս, եւ ահա այր մի, եւ տեսիլ
նորա իբրեւ զտեսիլ փայլուն պղնձոյ,
եւ ի ձեռին նորա էր լար շինողաց եւ
ձող չափոյ, եւ ինքն կայր [17]ի վերայ
4 դրանն՝։ Եւ ասէ ցիս այրն, [18]Տեսեր, որ-
դի՝ մարդոյ, արդ հայեաց աչօք քովք,
եւ լուր ականջօք քովք, եւ հաստա-
տեա ի մտի քում զամենայն զոր ես
ցուցից քեզ. զի վասն ցուցանելոյ քեզ
[19]եկիր այսր, եւ ցուցցես զամենայն զոր
դու տեսանես՝ տանն Իսրայելի։
5 Եւ ահա չուրջ զտաճարաւն [20]փողոցս,
եւ ի ձեռին առնն ձող չափոյ ի վեց
[21]կանգնոյ եւ թզաւ. եւ չափեաց զլայ-
նութիւն պարսպայն հաւասար ձողոյն,
եւ բարձրութիւն նորա հաւասար ձողոյն։
6 Եւ եմուտ ընդ դուռնն որ հայէր ընդ
արեւելս՝ [22]զեւթն աստիճանօք, եւ չա-
փեաց զկողակսն վեց վեց զկամարօք
դրանն հաւասար ձողոյն. եւ զերկայ-
նութիւն կողակին հաւասար ձողոյն, եւ
զլայնութիւն նորին հաւասար ձողոյն. եւ
կամարս ի մէջ կողակացն ի վեց կանգ-

---

[1]Եբր. ի Ձորն բազմութեան [2]Եբր. Համոնա, այսինքն՝ բազմութիւն [3]Եբր. գառինս եւ զնոխազս, զուարակս, պարարեալս Բասանու [4]Եբր. յազգս [5]Եբր. եւ թաքուցի [6]Եբր. թաքուցի զերեսս *Եբր. ամենայն տանն [7]Եբր. այէ-ցին [illegible], յիս [8]Եբր. թշնամեաց իւրեանց

[9]Եբր. ազգաց բազմաց [10]Եբր. ի խափանել իմ զնոսա յազգս [11]Եբր. թաքուցից [12]Եբր. զի հեղի զՈգի [13]Յեբր. պակասէ [14]Եբր. տասն [15]Եբր. Տեառն, եւ տարաւ զիս անդր [16]Եբր. ի հարաւոյ [17]Եբր. առ դրանն [18]Եբր. Որդի [19]Եբր. ածար [20]Եբր. պարիսպ արտաքուստ [21]Եբր. կանգնոյ. կանգունն կանգնաւ [22]Եբր. եւ ել յաստիճանս նորա, եւ չափեաց զսեամ դրանն հաւասար ձողոյ ի լայնութիւն, եւ

7 նոյ ։ Եւ կողակն երկրորդ հաւասար ձո-
ղոյն ի լայնութիւն , եւ հաւասար ձո-
ղոյն յերկայնութիւն , եւ կամարն ի հինգ
8 կանգնոյ ։ Եւ կողակն երրորդ հաւասար
ձողոյն յերկայնութիւն, եւ հաւասար ձո-
ղոյն ի լայնութիւն , եւ կամար դրանն
9 մերձ ի կոնք դրանն յութ կանգնոյ . Եւ
կամարք յերկուց կանգնոց , եւ կամարք
10 ներքին դրանն ։ Եւ կողակք դրանն դէմ
յանդիման միմեանց" երեք աստի եւ ե-
րեք անտի . եւ չափ մի էր երեցուն , եւ
չափ մի [1]կամարացն՝ աստի եւ անտի ։
11 Եւ չափեաց զլայնութիւն մտից դրանն
ի տասն կանգնոյ , եւ զերկայնութիւն
12 դրանն յերեքտասան կանգնոյ ։ Եւ [2]ի մի
կանգուն թովանդակեալ դէմ յանդիման
կողակացն՝ ի մի կանգուն սահմանեալ
յայս կոյս յայն կոյս, եւ կողակքն" աս-
13 տի եւ անտի ի վեց վեց կանգնոյ ։ Եւ
չափեաց զդուռնն [3]ի պարսպէ կողակին
մինչեւ յորմ կողակին", ի լայնութիւն
քսան եւ հինգ կանգուն . [4]եւ այն էր
14 դուռն ի դրան վերայ ։ Եւ զմիջոց կա-
մարի դրանն եւ զկողակս նորին ի վաթ-
15 սուն կանգնոյ շուրջ զդրամբն . Եւ զմի-
ջոց սրահին արտաքնոյ եւ զմիջոց կա-
մարի դրանն ներքնոյ՝ ի յիսուն կանգ-
16 նոյ ։ Եւ պատուհանք ծածուկ էին ի կո-
ղակսն , եւ ի կամարսն ներքուստ դրան
սրահին շուրջ շրջանակաւ . Նոյնպէս եւ
կամարացն , եւ պատուհանք շուրջ ներ-
քոյ եւ արտաքոյ , եւ ի վերայ կամա-
րացն արմաւենիք աստի եւ անտի ։
17 Եւ տարաւ զիս ի ներքին սրահն . եւ
ահա գահլիճք եւ սիւնք շրջանակօք՝
շուրջ զսրահիւքն յօրինեալք . երեսուն
գահլիճք ի մէջ սեանցն շրջանակաց ։
18 Եւ սիւնք դէմ յանդիման դրանցն ըստ
երկայնութեանն դրանցն , եւ սիւնք շրջա-
19 նակաւ ի ներքոյ ։ Եւ չափեաց զլայնու-
թիւն սրահին ի միջոցէ դրանն արտաք-
նոյ մինչեւ ցմիջոց դրանն ներքնոյ որ
հայէր ընդ արեւելս՝ հարեւր կանգուն ։
20 Եւ տարաւ զիս ի կողմն հիւսիսոյ , եւ
ահա դուռն մի որ հայէր ընդ հիւսի-
սի սրահին արտաքնոյ . եւ չափեաց զնա
21 յերկայնութիւն եւ ի լայնութիւն , Եւ
զկողակս նորա աստի եւ անտի , եւ զկա-
մարն եւ զկոնքն եւ զարմաւենիս . եւ
եղեւ ըստ չափոյ դրանն որ հայէր ընդ
արեւելս", յիսուն կանգուն յերկայնու-
թիւն եւ քսան եւ հինգ կանգուն ի լայ-
22 նութիւն ։ Եւ պատուհանք նորա եւ
[5]կամարք եւ արմաւենիք ըստ" դրանն
որ հայէր ընդ արեւելս . եւ ընդ եւթն
սանդուղս ելանէին ի նա , եւ [6]էր կա-
23 մարակապ ի ներքոյ ։ Եւ դուռն ներքին
սրահին հայէր ընդ դուռն հիւսիսոյ՝
ըստ օրինակի դրանն որ հայէր ընդ ա-
րեւելս . եւ չափեաց զսրահն" դրանէ ի
դուռն՝ հարեւր կանգուն ։
24 Եւ տարաւ զիս ընդ կողմն հարաւոյ ,
եւ ահա դուռն մի որ հայէր ընդ հա-
րաւ . եւ չափեաց [7]զնա եւ զկողակս
նորա եւ զկոնքս եւ զկամարս" ըստ նմին
25 չափոյ ։ Եւ պատուհանք նորա եւ [8]կա-
մարք շուրջանակաւ՝ ըստ օրինակի պա-

---

զմեւս եւս սեամն հաւասար ձողոյ ի լայնութիւն։ (7) Եւ սենեակքն՝ իւրաքանչիւր հաւասար ձողոյ յերկայնութիւն եւ հաւասար ձողոյ ի լայնութիւն, և անջրպետ սենեկացն ի հինգ կանգնոյ եւ սեամ դրանն որ առ սրահի դրան ի ներքուստ հաւասար ձողոյ։ (8) Եւ չափեաց զսրահ դրանն ի ներքուստ հաւասար ձողոյ. (9) Եւ չափեաց զսրահ դրանն կանգունս ութ, և դրան դիք նորա յերկուց կանգնոց. եւ սրահ դրանն էր ի ներքուստ։ (10) Եւ սենեակք դրանն որ ընդ արեւելս՝

[1] Եբր. դրանդեացն [2] Եբր. սահման առաջի սենեկացն կանգուն մի աստ, եւ կանգուն մի սահման անտի. եւ սենեակքն [3] Եբր. ի տանեաց միոյ սենեկին մինչեւ ի տանիս միւսոյ սենեկին [4] Եբր. դուռն յանդիման դրան։ (14) Եւ արար զդրանդիս ի վաթսուն կանգնոյ, եւ մինչեւ ի դրանդիս գաւթին որ շուրջ զդրամբն. (15) Եւ յերեսաց դրանն արտաքնոյ մինչեւ յերեսս սրահի դրանն ներքնոյ յիսուն կանգուն։ (16) Եւ պատուհանք փակագործք ի սենեակսն եւ ի դրանդիս նոցա ի ներքուստ դրանն շուրջ շուրջանակաւ, նոյնպէս եւ ի սրահսն, եւ պատուհանք ի ներքուստ շուրջ շուրջանակաւ , եւ ի վերայ դրանդեացն արմաւենիք ։

(17) Եւ եմոյծ զիս ի գաւիթն արտաքին. եւ ահա գահլիճք եւ քարայատակ շուրջանակի վասն գաւթին. գահլիճք երեսուն ի քարայատակին։ (18) Եւ քարայատակն որ առ դրունսն՝ էր յանդիման երկայնութեան դրանցն , քարայատակն որ ի խոնարհ։ (19) Եւ չափեաց զլայնութիւն յերեսաց խոնարհագոյն դրանն ցերեսս գաւթին ներքնոյ արտաքուստ , հարեւր կանգուն ընդ արեւելս եւ ընդ հիւսիս։ (20) Եւ չափեաց զերկայնութիւն եւ զլայնութիւն դրանն որոյ երեսք ի հիւսիսակողմն ի գաւթին արտաքնում։ (21) Եւ սենեակք նորա երեք աստի եւ երեք անտի. եւ դրանդիք նորա եւ սրահք նորա էին ըստ չափոյ դրանն առաջնոյ

[5] Եբր. սրահքն նորա և արմաւենիք նորա ըստ չափոյ [6] Եբր. սրահքն էին առաջի նոցա ։ (23) Եւ դուռն գաւթին ներքնոյ էր յանդիման դրանն հիւսիսոյ և արեւելից, եւ չափեաց [7] Եբր. զդրանդիս նորա եւ զսրահս նորա [8] Եբր. սրահք նորա

տուհանիցն [1]եւ կամարացն առաջնոյն՝՝,
յիսուն կանգուն յերկայնութիւն եւ քսան
26 եւ հինգ կանգուն ի լայնութիւն ։ Եւ
եւթն սանդուղք ի նմա, եւ [2]կամարք
ի ներքս՝՝, եւ արմաւենիք աստի եւ ան-
տի ի վերայ [3]կոճիցն ։
27 Եւ դուռն ներքոյ հանդէպ դրան սրա-
հին որ հայէր ընդ հարաւ, եւ չափեաց
զսրահն դրանէ ի դուռն ի լայնութիւն՝
28 հարիւր կանգուն ի կողմն հարաւոյ ։ Եւ
տարաւ զիս ի սրահն ներքին դրանն որ
հայէր ընդ կողմն՝՝ հարաւոյ. եւ չա-
փեաց զդուռնն որ ընդ հարաւ ըստ նմին
29 չափոյ ։ Եւ [4]զկողակսն եւ զկամարս եւ
զկոնքս նոյին չափով. եւ պատուհանք
նորա եւ կամարք շուրջ շրջանակաւ,
յիսուն կանգուն յերկայնութիւն եւ քսան
30 եւ հինգ ի լայնութիւն ։ Եւ շուրջ զնո-
վաւ կամարք՝ յիսուն կանգուն յերկայ-
նութիւն եւ քսան՝՝ եւ հինգ ի լայնու-
31 թիւն ։ Եւ [5]կամարք յարտաքնում սրա-
հին, եւ արմաւենիք ի կամարսն, եւ
32 եւթն սանդուղք ելանելիք նորա ։ Եւ
տարաւ զիս ի դուռնն որ հայէր ընդ ճա-
նապարհ արեւելից, եւ չափեաց զնա
33 ըստ առաջին չափոյն. Զկողակսն եւ զկա-
մարսն եւ զկոնքսն՝ ըստ նմին չափոյ.
եւ պատուհանք ի նմա, եւ կամարք
շուրջանակի՝՝, յիսուն կանգուն յերկայ-
նութիւն եւ քսան եւ հինգ ի լայնու-
34 թիւն ։ [6]Եւ կամարք ի ներքնում սրա-
հին, եւ արմաւենիք ի վերայ կամա-
րացն աստի եւ անտի, եւ եւթն սան-
դուղք ի նմա ։՝՝
35 Եւ տարաւ զիս ի դուռնն որ ընդ հիւ-
սիսի, եւ չափեաց ըստ նմին չափոյ,
36 [7]Զկողակսն եւ զկամարսն եւ զկոնքս,
եւ պատուհանք ի նմա շուրջանակի, եւ
կամարք՝՝ յիսուն կանգուն յերկայնու-
թիւն եւ քսան եւ հինգ կանգուն ի լայ-
37 նութիւն ։ [8]Եւ կամարք արտաքոյ դրանն,
եւ արմաւենիք կամարացն աստի եւ
անտի, եւ ութ սանդուղք ի նմա ։
38 Եւ զահլիճք նորա եւ լայնութիւնք
նորա եւ կամարք նորա հանդէպ երկ-
րորդ դրանն՝ ուր լուանային զողջա-
39 կէզսն ։ Եւ ի կամարի՝՝ դրանն երկու
սեղանք յայսկոյս, եւ երկու սեղանք
յայնկոյս, դի զենուցուն ի նմա զողջա-
կէզսն եւ զվասն մեղացն եւ զվասն ան-
40 գիտութեանն ։ [9]Եւ ընդ հարաւակողմն
խոզովակի ողջակիզացն ի մուտս դրանն
որ հայէր ընդ հիւսիսի՝ երկու սեղանք
որ հայէր ընդ արեւելս. եւ ի հարաւա-
կողմ կուսէ երկրորդի դրանն՝ հանդէպ
41 կամարաց դրանն երկու սեղանք ։ Եւ
ընդ արեւելս ութ սեղանք. չորք սե-
ղանք յայսկոյս, եւ չորք սեղանք յայն-
կոյս, հանդէպ հարաւոյ դրանն. եւ անդ
զենուցուն զզոհսն եւ զողջակէզսն, յան-
դիման ութից սեղանոց ողջակիզացն՝՝
42 Եւ չորք սեղանք ողջակիզացն քարի-
ղէնք կոփածոյք, կանգնաւ եւ կիսով
յերկայնութիւն, եւ կանգնաւ եւ կիսով
ի լայնութիւն, եւ կանգնաւ [10]եւ կիսով՝՝
ի բարձրութիւն. եւ ի վերայ նոցա դի-
ցեն զգործին՝ որով զենուցուն անդ զող-
43 ջակէզսն եւ զզոհսն ։ Եւ ծնօտս ուղ-
կեանս քանդակագործս ունիցին ի ներ-
քուստ շուրջանակի. եւ ի վերայ [11]սե-
ղանոյն յարկ՝ առ ի ծածկել յանձրեւոյ
եւ յերաշտութենէ ։

---

[1] Եբր. սյնոցին [2] Եբր. սրահք նորա առաջի նոցա [3] Եբր. դրանդեաց նորա ։

(27) Եւ դուռն գաւթին ներքնոյ հայէր ընդ հարաւ, և չափեաց դրանէ ի դուռն ընդ հարաւ կանգունս հարիւր ։ (28) Եւ եմոյծ զիս ի գաւիթն ներքին ընդ դուռնն [4]Եբր. սենեակք նորա եւ դրանդիք նորա և սրահք նորա ըստ նմին չափոյ, և պատուհանք նորա և սրահք նորա շուրջ շուրջանակաւ ի յիսուն կանգնոյ յերկայնութիւն եւ ի քսան եւ հինգ կանգնոյ ի լայնութիւն ։ (30) Եւ սրահք նորա շուրջ շուրջանակաւ քսան եւ հինգ կանգուն յերկայնութիւն, [5]Եբր. սրահք նորա ի գաւիթ անդր արտաքին եւ արմաւենիք ի դրանդիս նորա, եւ աստիճան ութ՝ աստիճանք նորա ։ (32) Եւ եմոյծ զիս ի գաւիթ անդր ներքին ընդ արեւելս. և չափեաց զդուռնն ըստ նմին չափոյ ։ (33) Եւ սենեակք նորա եւ դրանդիք նորա եւ սրահք նորա ըստ նմին չափոյ, եւ պատուհանք նմա եւ սրահից նորա շուրջ շուրջանակաւ [6]Եբր. Եւ սրահք նորա ի գաւիթ անդր արտաքին եւ արմաւենիք ի դրանդիս նորա աստի եւ անտի եւ աստիճանք ութ՝ աստիճանք նորա ։

[7] Եբր. Սենեակք նորա, դրանդիք նորա եւ սրահք նորա, և պատուհանք նմա շուրջ շուրջանակաւ
[8] Եբր. Եւ դրանդիք նորա ի գաւիթ անդր արտաքին եւ արմաւենիք ի դրանդիս նորա աստի եւ անտի, եւ աստիճանք ութ՝ աստիճանք նորա ։

(38) Եւ էր դահլիճ և մուտ նորա ի դրանդիս դրանցն. անդ լուանային զողջակէզսն ։ (39) Եւ ի սրահի [9]Եբր. Եւ յարտաքին կողմանն որ ելանէ ի մուտս դրանն որ հայի ընդ հիւսիսի՝ սեղանք երկու, եւ ի միւսում կողմանն որ առընթեր սրահի դրանն՝ սեղանք երկու ։ (41) Չորք սեղանք աստի և չորք սեղանք անտի ի կողմանէ դրանն, ութ սեղանք, յորս զենուին ։ [10]Յեբր. պակասէ [11]Եբր. սեղանոցն վմիս զոհին ։

44 Եւ տարաւ զիս ի սրահն ներքին. եւ
ահա երկու պատշգամք ի ներքոյ սրա-
հին, մի ընդ հարաւոյ դրանն որ հայէր
ընդ հիւսիսի եւ հանէր ընդ հարաւ. եւ
մի ընդ հիւսիսոյ դրանն որ հայէր ընդ
45 հարաւ եւ հանէր ընդ հիւսիսի։ Եւ ա-
սէ ցիս, Այս պատշգամ՝՝ որ հայի ընդ
կողմանս հարաւոյ՝ քահանայիցն եղիցի
որ պահեն զպահպանութիւնս տանն։
46 Եւ [1]պատշգամն որ հայի ընդ հիւսիսի՝
քահանայիցն եղիցի որ պահեն զպահ-
պանութիւն սեղանոյն. նոքա են որդիք
Սադովկայ՝ որ մերձենան ի Ղեւտացւոց
47 անտի պաշտել զՏէր։ Եւ չափեաց
[2]զսրահն յերկայնութիւն հարիւր կան-
գուն, եւ ի լայնութիւն հարիւր կան-
գուն, զչորեսին կողմանս նորա, եւ սե-
ղան յանդիման տաճարին։
48 Եւ տարաւ զիս [3]ի կունք տաճարին,
եւ չափեաց [4]զլայնութիւն կունքին՝՝ ի
միոջէ կողմանէ հինգ կանգուն, եւ ի
միւսմէ կողմանէ հինգ կանգուն, եւ
[5]զլայնութիւն մտին՝ չորեքտասան կան-
գուն. եւ զխոյակս ուսոց դրան կունքին
յայսկոյս յայնկոյս՝ երիս երիս կանգունս։
49 Եւ զբարձրութիւն կունքին՝՝ քսան կան-
գուն, եւ զլայնութիւն նորին՝ մետա-
սան կանգուն. եւ ընդ տասն աստիճան
ելանէին ի նա, եւ սիւնք երկու [6]էին
աստի՝՝ անտի։

## Գլ. ԽԱ

1 Եւ տարաւ զիս ի տաճարն, զորոյ չա-
փեաց [7]զկամարն՝ վեց կանգուն զլայ-
նութիւն ի միոջէ կողմանէ, եւ վեց
կանգուն [8]զերկայնութիւն կամարին ի
2 միւսմէ կողմանէ՝՝։ Եւ զլայնութիւն դրանն
տասն կանգուն, եւ [9]զխոյակս կոճոց՝՝
դրանն յայսկոյս յայնկոյս հինգ հինգ կան-
գուն. եւ չափեաց զերկայնութիւն նո-
րա քառասուն կանգուն, եւ զլայնու-
թիւն նորա քսան կանգուն։
3 Եւ եմուտ [10]ի ներքին սրահն, եւ չա-
փեաց զկամար մտին երկուս կան-
գունս, եւ զմուտն վեց կանգուն, եւ
զխոյակս կոճոց մտիցն յայսկոյս յայն-
կոյս եւթն եւթն կանգուն։
4 Եւ չափեաց զերկայնութիւն դրանն՝
քառասուն կանգուն, եւ զլայնութիւնն
քսան կանգուն՝ առաջի տաճարին. եւ
ասէ ցիս, Այս է սրբութիւն սրբու-
թեանցն։
5 Եւ չափեաց զորմ տաճարին ի վեց
կանգնոյ, եւ զլայնութիւն կողման
տանն ի չորից կանգնոց շուրջ շրջա-
նակաւ։
6 Եւ ի կողմանէ ի կողմն երեսուն եւ երիս
կանգունս կրկին. եւ անջրպետ ի մէջ
որմոյ տաճարին շուրջանակի շուրջ
զկողմամբքն. զի լինիցի այնոցիկ որք
անկանիցին պնդօք հայել, եւ ամենե-
ւին մի՛ մերձենայցեն յորմ տաճարին։
7 Եւ զլայնութիւն կողմանց վերին դրանն,
ըստ առանցից կողմանց յորմոցն առ ի
վերին կողմն շուրջ զտամբն. զի ըն-
դարձակութիւն լինիցի տանն ի վերուստ
եւ ի ներքուստ, որոց ելանիցեն ի վեր-
նայարկսն, եւ ի միջնայարկացն յերրորդ
8 յարկսն։ Եւ ձեղուսն տանն բարձրու-
թիւն շուրջ շրջանակաւ զանջրպետօք
կողմանցն՝ հաւասար ձողոյն ի վեց կանգ-
9 նոյ անջրպետ մի։ Եւ լայնութիւն որ-

---

(44) Եւ արտաքոյ դրանն ներքնոյ գաւիթք երգչաց ի գաւթի անդ ներքնում որ առընթեր դրանն հիւսիսոյ, եւ երեսք նոցա ի հարաւ. մին առընթեր դրանն արեւելից, երեսք նորա ի հիւսիսակողմն։ (45) Եւ ասէ ցիս, Այս գաւիթ

[1] Եբր. գաւիթն [2] Եբր. զգաւիթն [3] Եբր. ի սրահն [4] Եբր. զգրանդիս սրահին [5] Եբր. լայնութիւն դրանն երեք կանգուն աստի, եւ երեք կանգուն անտի։ (49) Զերկայնութիւն սրահին [6] Եբր. առ գրանդիսն էին մին աստի եւ մեւսն [7] Եբր. զգրանդիսն [8] Եբր. լայնութիւն ի միւսմէ կողմանէ, այն է լայնութիւն խորանին [9] Եբր. զկողմանս

[10] Եբր. ի ներքս, և չափեաց զգրանդիս մտին երկուս կանգունս, եւ զմուտն վեց կանգուն, եւ լայնութիւն մտին եւթն կանգուն։

(4) Եւ չափեաց զերկայնութիւն նորա քսան կանգուն, և զլայնութիւնն քսան կանգուն ըստ առաջոյ տաճարին. և ասէ ցիս, Այս է սրբութիւն սրբութեանցն։

(5) Եւ չափեաց զորմ տանն կանգունս վեց եւ զլայնութիւն սենեկաց որ շուրջ զտամբն կանգունս չորս։

(6) Եւ սենեակքն էին մի զմիով երեք կարգ, եւ թուով երեսուն, եւ պահանգք նոցա մտանէին յորմն տանն որ էր վասն սենեկացն շուրջանակի, յենուլ ի նոսա, բայց ոչ յենուլին յորմն տանն։ (7) Եւ սենեակքն լայնէին եւ շուրջ պատէին զտունն ըստ ելանելոյ ի վեր ի վեր, պատէին իսկ զտունն ըստ ելանելոյ ի վեր ի վեր շուրջ զտամբն, վասն այնորիկ լայնէր շինուածն ի վերուստ, եւ այսպէս ի խոնարհագոյն յարկէն լինէր ելանել ի վերինն ի միջնոյ անտի։ (8) Եւ տեսի զբարձրութիւն տանն շուրջ շուրջանակաւ. հիմունք սենեկացն ձող մի բովանդակ, այսինքն վեց կանգուն մեծ։ (9) Լայնութիւն

մոյ արտաքին կողմանն ի հինգ կանգ-
10 նոյ ։ Եւ առանցք ի մէջ կողմանց տանն
եւ ի մէջ պատուպամացն ի լայնութիւն
քսան կանգուն, եւ շրջանակաւ շրջա-
11 նակք տանն ։ Եւ դուռք պատուպամացն՝
յառանցս դրան միոյ որ ընդ հիւսիսի,
եւ դուռն մի ընդ հարաւ. եւ լայնու-
թիւն անկւոյն ընդարձակութեան վասն
լուսոյ առանցիցն՝ հինգ կանգուն ի լայ-
12 նութիւն շուրջանակի ։ Եւ անջրպետ
ընդդէմ առանցիցն ի ծովակողմ ճանա-
պարհին՝ յերկայնութիւն եւթանասուն
կանգուն, եւ լայնութիւն որմոյն ան-
ջրպետի հինգ կանգուն, եւ երկայնու-
13 թիւն նորին իննսուն կանգուն ։ Եւ չա-
փեաց առաջի տանն յերկայնութիւն հա-
րեւր կանգուն. եւ խորշքն եւ անջր-
պետք եւ որմք նոցա՝ յերկայնութիւն
14 հարեւր կանգուն ։ Եւ լայնութիւն ա-
ռաջի տանն, եւ խորշքն յանդիման նո-
15 րին՝ հարեւր կանգուն ։ Եւ չափեաց զեր-
կայնութիւն անջրպետին ընդդէմ խոր-
շիցն ի թիկանց տանն. եւ զխորշսն աս-
տի եւ անտի հարեւր կանգուն յերկայ-
16 նութիւն ։ Եւ տաճարն արտաքին եւ
անկիւնքն եւ կամարքն եւ յարկքն եւ
պատուհանքն վանդակապատքն, լու-
սանցոյցք շուրջ դերեւքումբք վասն հա-
յելոյ. եւ տունն, եւ որ զնովաւ յարկքն
առ հասարակ շուրջ շրջանակաւ տախ-

տակամած ի յատակացն մինչեւ ի պա-
տուհանսն. եւ պատուհանք բացեալք
երեքկին առ ի հայել, որպէս եւ ի ներ-
17 քոյ կողմանն մինչեւ յարտաքինն ։ Եւ
ի վերայ ամենայն տանն շուրջ շրջա-
նակաւ, եւ ի վերայ ամենայն տանն
18 շուրջանակի ներքոյ եւ արտաքոյ,՟ Քե-
րովբ քանդակեալ եւ արմաւենիք. եւ
արմաւենի մի ի մէջ քերովբէից, եւ
[1]երկու քերովբէքն հանդէպ միմեանց՟.
19 Միոյ քերովբէին դէմքն մարդոյ՝ ի միո-
ջէ կողմանէ արմաւենւոյն, եւ դէմք
առիւծու՝ ի միւսմէ կողմանէ արմաւեն-
ւոյն. եւ այսպէս քանդակեալ էր ամե-
20 նայն տաճարն շուրջանակի ։ Յատակաց
մինչեւ ցյարկսն քերովբէք եւ արմա-
21 ւենիք [2]քանդակեալք ։ Եւ սրբութիւնն
եւ տաճարն թռուցեալ եւ բացեալ չո-
րեքկուսի ։
22 Եւ դէմ յանդիման սրբութեանցն տե-
սիլ՝ իբրեւ նմանութիւն փայտեղէն սե-
ղանոյ՟, երեք կանգուն ի բարձրութիւն,
եւ երկու կանգուն յերկայնութիւն,
[3]եւ երկու կանգուն ի լայնութիւն. եւ
եղջիւրք ի նմա. եւ յատակքն նորա եւ
որմք՟ փայտեղէնք. եւ ասէ ցիս, Այս է
23 սեղան երեսաց Տեառն ։ [4]Եւ երկու մուտք
տաճարին. եւ երկու մուտք սրբու-
24 թեանցն. Երկոցունց շրջանակաւ մախցն՝
երկու մուտք միոյ, եւ երկու մուտք
25 միւսոյ դրանն. Եւ քանդակագործք ի
վերայ նոցա, եւ ի վերայ մախց տաճարին
քերովբէք եւ արմաւենիք քանդակեալք
ըստ քանդակի սրբութեանցն. եւ փայ-
տակերտ ագնիւ դէմ յանդիման կամարին
արտաքուստ կողմանէ. եւ պատուհանք

---

որմոյ սենեկացն արտաքոյ ի հինգ կանգնոյ, եւ որ մնացեալն է՝ տեղին էր սենեկացն ի ներքուստ։ (10) Եւ ի մէջ դահլճիցն լայնութիւնն էր քսան կանգուն շուրջ շուրջանակաւ տանն։ (11) Եւ դրունք դահլճիցն հայէին ի մնացեալ տեղին, դուռն մի ի հիւսիսոյ, դուռն մի ի հարաւոյ. եւ լայնութիւն տեղւոյն մնացելոյ ի հինգ կանգնոյ շուրջ շուրջանակաւ։

(12) Եւ շինուածն որ առաջի բացատին յարեւմուտս կայր ի լայնութիւն յեւթանասուն կանգնոյ, եւ որմն շինուածոյն ի հինգ կանգնոյ ի լայնութիւն շուրջանակաւ, եւ երկայնութիւն նորա յիննսուն կանգնոյ։ (13) Եւ չափեաց զտունն. երկայնութիւն հարեւր կանգնոյ եւ բացատն եւ շինուածն եւ որմք նորա յերկայնութիւն հարեւր կանգուն։ (14) Եւ լայնութիւն երեսաց տանն եւ բացատին յարեւելս կայր՝ հարեւր կանգուն։

(15) Եւ չափեաց զերկայնութիւն շինուածոյն առաջի բացատին որ յետուստ կողմանէ նորա, եւ զճեմելիս նորա աստի եւ անտի հարեւր կանգուն, եւ զտաճարն ի ներքուստ եւ զսրահն գաւթին։ (16) Զսեամսն եւ զպատուհանսն վանդակապատս եւ զճեմելիս շուրջանակի յերեսին ի նոսա յանդիման սեմոցն՝ տախտակա-

մածս շուրջ շուրջանակաւ ի յատակացն մինչեւ ի պատուհանսն. և զպատուհանսն փակեալս. (17) Զառ ի վերուստ դրանն մինչեւ ի տունն ներքին եւ արտաքին եւ զամենայն որմն շուրջ շուրջանակաւ ի ներքոյ եւ արտաքոյ ըստ իւրաքանչիւր չափոյ։ [1]Եբր. երեսք երկու միոյ միոյ քերովբէի [2]Եբր. քանդակեալք, նոյնպէս եւ որմն տաճարին։ (21) Դրանդիք տաճարին չորեքկուսիք, և տեսիլ երեսաց սրբութեանն ըստ տեսլեան դոցունց։

(22) Սեղանն փայտեղէն [3]Եբր. և անկիւնք ի նմանէ եւ երկայնութիւն նորա եւ ծնօտք նորա [4]Եբր. Եւ դրունքն տաճարին և սրբութեանն երկու. (24) Եւ երկու փեղկք դրանցն, եւ փեղկքն ծալեալք յերկուս, երկու փեղկ միոյ դրանն, եւ երկու փեղկ միւսոյն։ (25) Եւ քանդակագործք ի վերայ նոցա, ի վերայ դրանց տաճարին, քերովբէք եւ արմաւենիք, իբրեւ քանդակեալք յորմունս. եւ թանձրուղ փայ-

26 ծածուկք ։ Եւ չափեաց յայսկոյս յայն-
կոյս պյարկս կամարին, եւ զկողմանս
տանն խառնեալ ընդ միմեանս ։՚՚

## Գլ. ԽԲ

1 Եւ եհան զիս [1]ի սրահն արտաքին ընդ
արեւելս դէմ յանդիման դրանն հիւսի-
սոյ, եւ տարաւ զիս ի ներքս. եւ ահա
պատշգամք հինգ՝ առանցիւք եւ խոր-
2 շիւք ընդ կողմ հիւսիսոյ, Հարեւր կան-
գուն յերկայնութիւն եւ յիսուն կան-
3 գուն ի լայնութիւն. Նկարեալք ըստ օ-
րինակի դրան սրահին ներքնոյ, եւ ըստ
օրինակի շրջանակաւ սեանց սրահին
արտաքնոյ. դէմ ընդ դէմ կարգեալ ե-
4 րեքպատհեան ։ Եւ դէմ ընդ դէմ պատշգա-
մացն գնացք ի տասն կանգնոյ լայնու-
թիւն, եւ հարեւր կանգուն յերկայնու-
թիւն. եւ ներքսագոյն կողմ ճանապար-
հին՚՚ կանգուն մի, եւ դրունք նոցա ընդ
5 հիւսիսի ։ [2]Եւ գնացք ի վերնատունս
նոյնպէս, զի խառնեալ էին սիւնքն
շրջանակաւ ի ներքուստ մինչեւ ի վեր.
եւ անջրպետն նոյնպէս, եւ սիւնքն
շրջանակօք, եւ անջրպետք եւ մոյթք.
6 քանզի երեքպատհեանք էին ։ Եւ սիւնք
ոչ գոյին իբրեւ զսիւնս պատշգամացն.
վասն այնորիկ առանցք էին ի ներքոյ
կողմանէն, եւ ի միջնայարկացն ի գետ-
7 նոյ կողմանէ յիսուն ։ Եւ լոյս արտա-
քուստ, որպէս եւ պատշգամք սրահին
արտաքնոյ որ հայէին դէմ յանդիման պա-
տըշգամացն՝ որ ընդ հիւսիսոյ՝ յերկայ-
8 նութիւն յիսուն կանգուն ։ Քանզի եր-
կայնութիւն պատշգամացն որ հայէին
ի սրահն արտաքին՝ էր ի յիսուն կանգնոյ,
եւ նոքա էին դէմ յանդիման միմեանց,
9 ընդ ամենայն հարեւր կանգուն ։ Եւ
դրունք պատշգամացն որ ընդ մուտս
արեւելից՝ վասն մտանելոյ ընդ նոսա
10 յարտաքին սրահէ անտի, Ըստ լուսա-
մտին առաջին գնացին որ ընդ կողմն
հարաւոյ՝ դէմ յանդիման հարաւոյ, եւ
ընդդէմ անջրպետացն եւ հանդէպ խոր-
11 շիցն ։ Եւ պատշգամքն եւ գնացքն հան-
դէպ նոցուն ըստ չափոյ պատշգամացն
ճանապարհին՝ որ ընդ հիւսիսի, եւ ըստ
երկայնութեան նոցա եւ ըստ լայնու-
թեան նոցա եւ ըստ ելից նոցա, եւ ըստ
շրջանակաց նոցին, եւ ըստ լուսանցու-
12 ցաց. Եւ ըստ մտից պատշգամացն՝ որ
ընդ հիւսիս, ըստ մտից պատշգամացն
որ ընդ հարաւ. եւ ըստ մտից առաջին
գնացիցն առ ի գլոյն տալոյ անջրպե-
տութեան ձողոյն, եւ հանդէպ արեւե-
լից գնալ ընդ նոսա ։
13 Եւ ասէ ցիս, Պատշգամքդ որ են ընդ
հիւսիսի, եւ պատշգամքդ որ են ընդ
հարաւ՝ հանդէպ բացատացն, դոքա են
պատշգամք սրբութեանն ուր ուտեն
քահանայքն որդիքն Սադովկայ մերձա-
ւորք Տեառն զսրբութիւն սրբութեանցն՚՚,
եւ անդ դիցեն զսրբութիւն սրբու-
թեանցն, եւ զզոհսն եւ զվասն մեղացն
եւ զվասն անգիտութեանն. քանզի սուրբ

---

տեղէն առաջի սրահին արտաքուստ ։ (26) Եւ պատուհանք վանդակապատք եւ արմաւենիք էին աստի եւ անտի ի կողմանս սրահին, եւ ի սենեակս տանն եւ ի սանդուղսն ։ [1]Եբր. ի գաւիթն արտաքին ընդ ճանապարհն որ ի հիւսիս, եւ եմոյծ զիս ի դահլիճն որ յանդիման բացատին եւ յանդիման շինուածոյն որ ընդ կողմ հիւսիսոյ ։ (2) Յանդիման դրանն հիւսիսոյ երկայնութիւն հարեւր կանգուն եւ լայնութիւն յիսուն կանգուն ։ ( ) Յանդիման քսան կանգնոյն որ ի գաւիթին ներքնում, եւ յանդիման քարայատակին, որ յարտաքնում գաւթին ճեմելիք առ ճեմելիս երեքկին ։ (4) Եւ յանդիման դահլիճին գնացք ի տասն կանգնոյ ի լայնութիւն ի ներքուստ, ճանապարհ [2]Եբր. Եւ դահլիճքն վերինք էին կարճագոյն, զի ճեմելիքն ի նոցունց, ի խոնարհագոյն եւ ի միջին սենեկաց շինուածոյն, առնուին վայրս. (6) Զի էին երեք կարգեան, եւ սիւնք ոչ գոյին նոցա, իբրեւ զսիւնս սրահիցն, վասն այնորիկ ի գետնոյ, ի խոնարհագոյն յարկաց եւ ի միջնոց, տակաւ անձկանային ։ (7) Եւ որմն որ էր արտաքոյ, առ երի դահլիճին ի գաւիթ անդր արտաքին, յանդիման դահլիճին էր ի յիսուն կանգնոյ յերկայնութիւն ։ (8) Զի երկայնութիւն դահլիճին գաւթին արտաքնոյ էր ի յիսուն կանգնոյ, եւ ահա յանդիման տաճարին հարեւր կանգուն ։ (9) Եւ ի ներքուստ դահլիճին այնոցիկ, առ ի մտանելոյ ի նոսա ի գաւթէն արտաքնոյ, էր մուտ յարեւելից ։ (10) Ի լայնութեան որմոյ գաւթին, ընդ արեւելս, յանդիման բացատին, եւ յանդիման շինուածոյն՝ դահլիճք ։ (11) Եւ էր ճանապարհ առաջի նոցա ըստ տեսլեան ճանապարհի դահլիճին ընդ կողմն հիւսիսոյ ըստ երկայնութեան նոցա, նոյնպէս եւ լայնութիւն նոցա. եւ ամենայն ելք նոցա, եւ ըստ օրինակի նոցա եւ ըստ մտից նոցա ։ (12) Այնպէս եւ մուտ դահլիճին որ ընդ հարաւ, մուտ ի գլուխ ճանապարհին, ճանապարհ առաջի որմոյն, ճանապարհ ուղղորդ ընդ արեւելս ի գալն առ նոսա ։

(13) Եւ ասէ ցիս, Դահլիճքդ որ են ընդ հիւսիսի, եւ դահլիճքդ որ են ընդ հարաւ՝ հանդէպ բացատին, դոքա են դահլիճք սրբութեանն ուր ուտեն քահանայքն որ մերձենան առ Տէր

14 է տեղւոյն ։ [1]Եւ մի՛ ոք մտանիցէ անդր
բաց ի քահանայիցն . եւ ոչ ելանիցեն
ի սրբութենէ անտի ի սրահն արտաքին .
զի յամենայն ժամանակի որ մերձե-
նանն՝ սուրբ կացցեն . եւ մի՛ մատչիցին
ի պատմուճանս իւրեանց որով պաշտի-
ցենն , քանզի սուրբ է այն՚՚ . եւ զգեց-
ցին այլ հանդերձ յորժամ մերձենայցեն
ի ժողովուրդն ։
15 Եւ կատարեցաւ չափ տաճարին ներքը-
նոյ . եւ եհան զիս ընդ ճանապարհ դրանն
որ հայէր ընդ արեւելս , եւ չափեաց
[2]զձեւ տանն շուրջանակի ըստ յօրի-
16 նուածոյ ։ Եւ եկն եկաց առ հարաւային
դրանն որ հայէր ընդ արեւելս , եւ չա-
17 փեաց հինգ հարեւր չափով ձողոյն ։ Եւ
դարձաւ ի կողմ հիւսիսոյ , եւ չափեաց
հանդէպ հիւսիսոյ հինգ հարեւր չափով
18 ձողոյն ։ Եւ դարձաւ ի ծովակողմն , եւ
չափեաց հանդէպ ծովուն հինգ հարեւր
19 չափով ձողոյն ։ Եւ դարձաւ ի կողմն
հարաւոյ , եւ չափեաց հանդէպ հարա-
20 ւոյ հինգ հարեւր չափով ձողոյն ։ Եւ
զփողոցս նորա շուրջանակի ի չորեսին
կողմանսն նոյնպէս չափով . եւ յօրինեաց
զնա եւ զփողոցս նորա շուրջանակի՝ ի
հինգ հարեւր կանգնոյ հանդէպ արեւե-
լից , եւ ի հինգ հարեւր կանգնոյ զլայ-
նութիւնն՝ անջրպետել ի մէջ սրբու-
թեանցն , եւ ի մէջ պարապայն յօրի-
նուածոյ տաճարին ։՚՚

ԳԼ . ԽԳ

1 Եւ ած զիս [3]ի դուռնն որ հայէր ընդ
2 արեւելս , եւ եհան զիս ընդ այն ։ Եւ
ահա փառքն Աստուծոյ Իսրայելի գային
ընդ ճանապարհն արեւելից , եւ ձայն
[4]բանակին իբրեւ զձայն կրկնելոյ՚՚ բազ-
մաց . եւ երկիրն լուսաւորեցաւ [5]ի նմա-
նութիւն լուսաւորաց ի փառացն շուր-
3 ջանակի՚՚ ։ Եւ տեսիլն զոր տեսանէի ,
էր ըստ տեսլեանն զոր տեսանէի [6]ի ժա-
մանակի իբրեւ մտանէի օծանել զքա-
ղաքն . եւ տեսիլ կառացն զոր տեսի ,
էր՚՚ ըստ տեսլեանն զոր տեսի ի վերայ
Քոբար գետոյ . եւ անկայ ի վերայ ե-
րեսաց իմոց ։
4 Եւ փառքն Տեառն մտին ի տաճարն
ընդ ճանապարհ դրանն՝ որ հայէր ընդ
5 արեւելս ։ Եւ համբարձ զիս Հոգին ,
եւ տարաւ զիս [7]ի սրահն ներքին . եւ
ահա լի էր փառօք Տեառն տաճարն ։
6 [8]Եւ կայի անդ , եւ ահա՚՚ ձայն ի տա-
ճարէ անտի որ խօսէր ընդ իս . եւ այր
7 մի կայր մօտ առ իս . Եւ ասէ ցիս , Որ-
դի մարդոյ , [9]տեսե՞ր զտեղի՚՚ աթոռոյ ի-
մոյ եւ [10]զտեղի հետոյ ոտից իմոց , ուր իք
բնակեսցէ անուն իմ ի մէջ տանն՚՚ Իս-
րայելի յաւիտեան , եւ մի՛ եւս պղծես-
ցեն տունն Իսրայելի զանուն իմ սուրբ՝
նոքեանք եւ [11]առաջնորդք իւրեանց
պոռնկութեամբ իւրեանց եւ [12]սպանու-
8 թեամբք իշխանացն որ ի մէջ նոցա . Ի
դնել նոցա զդրանդս իմ ի մէջ դրանդեաց
նոցա , եւ զսեամս իմ առ սեամս նո-
ցա . եւ արկին զպարիսպս նեղել՚՚ ընդ
իս եւ ընդ նոսա , եւ պղծեցին զանուն
իմ սուրբ անօրէնութեամբ իւրեանց զոր
առնէին . եւ խորտակեցի զնոսա բար-
9 կութեամբ իմով [13]եւ սպանմամբ՚՚ ։ Դո-
նեայ արդ մերժեսցեն զպոռնկութիւնս
իւրեանց , եւ [14]զսպանութիւնս իշխա-
նաց նոցա՚՚ յինէն , եւ բնակեցայց ի մէջ
նոցա յաւիտեան ։
10 Եւ դու , որդի մարդոյ , ցոյց տանդ
Իսրայելի զտաճարդ , եւ [15]դադարեսցեն
ի մեղաց իւրեանց , զտեսիլ զորա եւ
11 զձեւ եւ զյօրինուած . Եւ նոքա ընկալ-
ցին զտանջանս իւրեանց վասն ամե-

[1]Եբր. Ի մտանել անդր քահանայիցն՝ մի՛ ելանի-
ցեն ի սրբութենէ անտի ի գաւիթն արտաքին.
այլ անդ թողցեն զհանդերձս պաշտաման իւր-
եանց, քանզի սուրբ են [2]Եբր. զնա շուրջանակի։
(16) Չափեաց զկողմն արեւելից ձողով չափոյն
հինգ հարեւր ձող շուրջանակի։ (17) Չափեաց
զկողմն հիւսիսոյ հինգ հարեւր ձող ըստ ձողոյ
չափոյն շուրջանակի ։ (18) Չափեաց զկողմն հա
րաւոյ հինգ հարեւր ձող ըստ ձողոյ չափոյն։(19)
Եւ դարձաւ ի կողմն արեւմտից , եւ չափեաց
ձողով չափոյն հինգ հարեւր ձող։ (20)Չափեաց
զայն ի չորեցունց կողմանց. պարիսպ նմա շուր-
ջանակաւ շուրջանակի , երկայնութիւն՝ հինգ
հարեւր, եւ լայնութիւն հինգ հարեւր , ան-
ջրպետել ի մէջ սրբոյն եւ անսրբոյ ։ [3]Եբր.
ի դուռնն, դուռն [4]Եբր. Նորա իբրեւ զձայն
ջրոց

[5]Եբր. ի փառաց նորա [6]Եբր. ի գալ իմում կոր-
ծանել զքաղաքն . և տեսիլքն էին [7]Եբր. ի գա-
ւիթն [8]Եբր. Եւ լուայ [9]Եբր. այս է տեղի [10]Եբր.
տեղի հետոց ոտից իմոց, ուր բնակեցայց անդ ի
մէջ որդւոցն [11]Եբր. թագաւորք [12]Եբր. դիա-
կամբք թագաւորաց իւրեանց ի բարձունս իւր-
եանց։ (8) Ի դնել նոցա զսեամս իւրեանց առ
սեմոց իմոց, և զդրանդիս իւրեանց առ դրանդ-
եաց իմոց . եւ որմն միայն էր [13]Յեբր. պակաս
[14]Եբր. զդիակունս թագաւորաց իւրեանց [15]Եբր.
ամաչեսցեն յանօրէնութեանց իւրեանց , եւ
չափեսցեն զօրինակն ։ (11) Եւ եթէ ամաչեսցեն

նայնի զոր արարին ։ Եւ նկարեսցես
զտունդ եւ զպատրաստութիւնդ իւր¨,
եւ զել եւ զմուտ դորա եւ [1]զկահ, եւ
զամենայն հրամանս դորա եւ զամենայն
օրէնս եւ զիրաւունս դորա ցուցցես նոցա,
եւ գրեսցես առաջի նոցա. եւ պահեսցեն
զամենայն [2]իրաւունս եւ զհրամանս
իմ¨, եւ արասցեն զնոսա։ [3]Եւ նկարագիր
12 տանն ի վերայ գլխոյ լերինն, եւ ամենայն
սահմանք նորա շուրջանակի, սրբութիւն
սրբութեանց են. այս օրէն է տաճարին։
13 Եւ այս չափ [4]սեղանոյն. կանգուն մի
ի կանգնոց, եւ կանգուն մի եւ ուղուկ
գոգած խորութեան նորա¨. եւ կանգուն
մի լայնութիւն, եւ սպակ շուրջ զծնօ-
տիւք նորա շուրջանակի թզաւ մի. եւ
14 այս բարձրութիւն [5]սեղանոյն ի խորու-
թենէ սկզբան փորուածոյն մինչեւ ի մեծ
քաւութիւնն, կանգունք երկուք ի ներ-
քուստ¨, եւ ի լայնութիւն կանգուն մի.
եւ [6]ի փոքր քաւութենէն մինչեւ ի մեծ
քաւութիւնն¨ կանգունք չորք, եւ ի
15 լայնութիւն կանգուն մի. Եւ [7]բուռնն ի
չորից կանգնոց, եւ [8]ի բնէն ի վեր ցեղ-
16 ջերումն՝ կանգուն մի ։ Եւ բուռնն յերկո-
տասան կանգնոյ¨ առ երկոտասան կան-
գուն ի լայնութիւն, չորեքկուսի ի չո-
17 րեսին կողմանս իւր ։ Եւ [9]քաւութիւնն
չորեքտասան կանգուն յերկայնութիւն,
եւ չորեքտասան կանգուն ի լայնութիւն,
[10]հասարակ ի չորեցունց կողմանց. եւ
ծնօտքն պատուածոյք շուրջանակի պա-
տեալ զնովաւ ի կէս կանգնոյ, եւ բո-
լորակն նորա¨ շուրջանակի կանգուն մի,
եւ աստիճանքն նորա ընդ արեւելս ։
18 Եւ ասէ ցիս [11]Տէր, Որդի մարդոյ,
այսպէս ասէ Տէր Տէր. Այս հրամանք
են սեղանոյն յաւուր գործուածոյ իւրոյ.
մատուցանել ի վերայ նորա ողջակէզս,
եւ [12]հեղուլ առ նովաւ արիւն ։

յամենայնէ զոր արարին, զձեւ տանն եւ զյօրինուած նորա [1]Եբր. զամենայն ձեւս նորա [2]Եբր. ձեւս նորա եւ զամենայն հրամանս նորա [3]Եբր. Այս է [4]Եբր. սեղանոյն՝ ի կանգունս. (կանգուն մի՝ կանգուն եւ ուղուկ) եւ գոգ՝ կանգուն մի [5]Եբր. սեղանոյն. (14) Եւ ի խորութենէ գետնոյն մինչեւ ի խոնարհագոյն շրջանակն կանգունք երկու [6]Եբր. ի շրջանակէն փոքուէ մինչեւ ի շրջանակն մեծ [7]Եբր. զոհանոյն [8]Եբր. ի զոհանոցէ անտի եւ ի վեր եղջեւրք չորք. (16) Եւ զոհանոցն յերկոտասան կանգնոյ յերկայնութիւն [9]Եբր. շրջանակն [10]Եբր. եւ սահմանն շուրջ զնովաւ ի կէս կանգնոյ, եւ գոգն [11]Եբր. պակաս [12]Եբր. սրսկել

19 Եւ տացես քահանայիցն Ղեւտացւոց
որք ի զաւակէ Սադովկայ [13]մերձեսցին
առ իս, ասէ Տէր Տէր, պաշտել զիս,
20 զուարակ մի յանդւոյ վասն մեղաց ։ Եւ
[14]առցեն յարենէ նորա, եւ [15]դիցեն ի վե-
րայ չորեցունց եղջերաց սեղանոյն, եւ
ի վերայ չորեցունց անկեանց [16]քաւու-
թեանն, եւ շուրջ զյատակաւն, եւ ցա-
21 նեսցեն եւ քաւեսցեն ։ Եւ առցեն¨
զզուարակն զվասն մեղացն, եւ այրես-
ցի ի զատեալ տեղւոջ տաճարին՝ ար-
22 տաքոյ սրբութեանցն ։ Եւ յաւուրն երկ-
րորդի [17]առցեն նոխազս երկուս յայծեաց
անարատից¨ վասն մեղաց, եւ քաւեսցեն
զսեղանն՝ որպէս քաւեցին զուարակաւն։
23 Եւ յետ վախճանելոյ[18] զքաւութիւնն,
[19]մատուսցեն զուարակ յարջառոց անա-
24 րատ, եւ խոյ ի հօտից անարատ ։ Եւ
[20]մատուսցեն առաջի Տեառն, եւ ցանեսցեն
ի վերայ նոցա քահանայքն աղ, եւ հան-
25 ցեն զնոսա յողջակէզս Տեառն ։ Զեւթն
օր [21]արասցեն նոխազ մի վասն մեղաց
հանապազ, եւ զուարակ մի յարջառոց,
եւ խոյ մի ի հօտից անարատ արասցեն ։
26 Զեւթն օր քաւեսցեն զսեղանն եւ
սրբեսցեն զնա, եւ կատարեսցեն զձեռս
27 իւրեանց ։ Եւ վախճանեսցեն զաւուրսն,
եւ եղիցի յօրէն ութերորդէ եւ անդր՝
արասցեն քահանայքն ի վերայ սեղա-
նոյն զողջակէզս ձեր, եւ [22]զվասն փրկու-
թեան ձերոյ¨, եւ ընկալայց զձեզ, ասէ
Տէր Տէր ։

## Գլ. ԽԴ

1 Եւ դարձոյց զիս ընդ ճանապարհ ար-
տաքին դրան սրբութեանցն՝ որ հայէր
2 յարեւելս, եւ այն էր փակեալ ։ Եւ ասէ
ցիս Տէր, Այդ դուռն փակեալ կացցէ
եւ մի՛ բացցի, եւ մի՛ ոք անցցէ ընդ
դա, զի Տէր Աստուած Իսրայէլի [23]մտցէ
3 ընդ դա, եւ եղիցի փակեալ ։ Քանզի
առաջնորդ իշխանն նա նստցի ի դմա
ուտել հաց առաջի Տեառն, ընդ ճանա-
պարհ [24]կամարի դրանն մտցէ, եւ ընդ
նոյն ճանապարհ ելցէ ։

[13]Եբր. մերձեցելոց [14]Եբր. առցես [15]Եբր. դիցես [16]Եբր. շրջանակին, եւ ի վերայ սահմանին շուրջանակի, եւ սրբեսցես զնա, եւ քաւեսցես զնա։ (21) Եւ առցես [17]Եբր. մատուսցես նոխազ յայծեաց անարատ [18]Եբրայեցին յաւելու. քո [19]Եբր. մատուսցես [20]Եբր. մատուսցես զնոսա [21]Եբր. արասցես [22]Եբր. զխաղաղականս ձեր [23]Եբր. եմուտ [24]Եբր. սրահի

4 Եւ տարաւ զիս ընդ ճանապարհ դրանն
որ ընդ հիւսիսի յանդիման տաճարին.
եւ տեսանէի եւ ահա փառօք Տեառն
լի էր տունն Տեառն, եւ անկայ ի վե-
5 րայ երեսաց իմոց։ Եւ ասէ ցիս Տէր,
Որդի մարդոյ, դիր ի սրտի քում, եւ
տես աչօք քովք, եւ լուր ականջօք
քովք զամենայն ինչ զոր ես ընդ քեզ
[1]խօսեցայց, ըստ ամենայն հրամանաց
տանդ Տեառն եւ ըստ ամենայն իրաւանց
դորա. եւ կարգեսցես ի սրտի քում
զմուտ տանդ ըստ ամենայն ելից դորա
6 եւ ըստ ամենայն սրբութեանցն։ Եւ
ասասցես ցտունդ Իսրայելի՝ տուն դառ-
նացողաց, Այսպէս ասէ Տէր Տէր. Շատ
լիցի ձեզ առ ամենայն անօրէնութեամբք
7 ձերովք, տունդ Իսրայելի, Մուծանել
ձեզ զորդիս այլազգիս՝ անթլփատս սրտիւ
եւ անթլփատս մարմնով՝ լինել ի սրբու-
թիւնս իմ, եւ պղծել զնոսա, ի մատու-
ցանել ձեզ զհացդ իմ ճարպով եւ ա-
րեամբ, եւ անցանէք զուխտիւ իմով
ամենայն անօրէնութեամբք ձերովք։
8 Եւ ոչ պահեցէք զպահպանութիւնս
սրբութեանց իմոց, եւ կարգեցէք զնո-
սա պահել զպահպանութիւնս սրբու-
9 թեան սրբութեանց [2]իմոց։ Վասն այ-
դորիկ այսպէս ասէ Տէր Աստուած". Ա-
մենայն որդի օտարածին՝ անթլփատ
սրտիւ եւ անթլփատ մարմնով՝ մի՛ մտցէ
ի սրբութիւնս իմ յամենայն որդւոց
այլազգեացն որ իցեն [3]ի տանդ Իսրա-
10 յելի։ Այլ եւ Ղեւտացիքն որք հեռա-
ցան յինէն ի մոլորել [4]ժողովրդեանն, որ
մոլորեցան յինէն զհետ [5]խորհրդոյն իւր-
եանց, եւ ընկալցին ըստ անօրէնութեանց
11 իւրեանց։ Եւ եղիցին ի սրբութիւնս իմ
պաշտօնեայք, բռնապանք դրանց տանդ,
եւ սպասաւորք տաճարիդ. նոքա զե-
նուցուն զողջակէզս եւ զզոհս ժողո-
վրդեանն, եւ նոքա կացցեն առաջի
ժողովրդեանն՝ լինել նոցա ի սպասա-
12 ւորս։ Փոխանակ զի էին նոքա սպասա-
ւորք առաջի կռոցն նոցա, եւ եղեն տանն
Իսրայելի [6]այն ի տանջանս" անիրաւու-
թեան. վասն այնորիկ ամբարձի զձեռն
իմ ի վերայ նոցա, ասէ Տէր Աստուած,
եւ ընկալցին ըստ անօրէնութեան իւր-
13 եանց. Եւ մի՛ մերձեսցին առ իս քահա-
նայանալ ինձ, եւ մի՛ հպել յամենայն
սրբութիւնս [7]որդւոյն Իսրայելի, եւ մի՛
յամենայն սրբութիւն սրբութեանց ի-
մոց". եւ ընկալցին զանարգանս իւր-
եանց [8]մոլորութեամբն զոր մոլորեցան։
14 Եւ կարգեսցեն" զնոսա պահել զպահ-
պանութիւնս տանն՝ յամենայն ի գործս
նորա, եւ յամենայն ինչ զոր գործես-
ցեն անդ։
15 Եւ քահանայքն Ղեւտացիք՝ որդիքն
Սադովկայ՝ որք պահեցին զպահպանու-
թիւնս սրբութեանց իմոց ի մոլորել
տանն Իսրայելի յինէն, նոքա մերձես-
ցին առ իս պաշտել զիս. եւ կացցեն
առաջի երեսաց իմոց՝ մատուցանել ինձ
[9]զոհս եւ" ճարպ եւ արիւն, ասէ Տէր
16 Աստուած։ Նոքա մտցեն ի սրբութիւնս
իմ, եւ նոքա մերձեսցին ի սեղան իմ
պաշտել զիս, եւ պահեսցեն զպահպա-
17 նութիւնս իմ։ Եւ եղիցի ի մտանելն
նոցա ընդ դրունս [10]սրահին ներքնոյ,
զգեցցին զպատմուճանս կտաւիս. եւ
մի՛ զգենուցուն ասուիս ի պաշտամանն
իւրեանց [11]ի դրանէ ներքին սրահին"։
18 Եւ խոյրս կտաւիս ունիցին ի գլուխս
իւրեանց եւ անդրավարտիս կտաւիս
յերանս իւրեանց, եւ [12]ոչ զգենուցուն
19 բռնութիւն"։ Եւ յելանելն իւրեանց
[13]յարտաքին սրահն" առ ժողովուրդն՝
մերկասցին զպատմուճանս իւրեանց ո-
րով պաշտիցեն. եւ դիցեն զնոսա ի
սենեակն սրբութեանց, եւ զգեցցին այլ
պատմուճանս. եւ մի՛ սրբեսցեն զժողո-
20 վուրդն պատմուճանօք իւրեանց։ Եւ
զգլուխս իւրեանց մի՛ գերծցեն, եւ
զվարս իւրեանց մի՛ [14]անօսրացուսցեն,
ծածկելով ծածկեսցեն" զգլուխս իւր-
21 եանց։ Եւ գինի մի՛ արբցեն ամենայն
քահանայքն ի մտանելն իւրեանց ի ներ-
22 քին [15]սրահն։ Եւ զայրի եւ զհանեալ մի՛
առնուցուն իւրեանց ի կանայս, այլ
զկոյսս ի զաւակէ տանն Իսրայելի, եւ
այրի թէ իցէ ի քահանայէ մնասցէ՝
23 առցեն։ Եւ զժողովուրդն իմ ուսուս-

[1] Ոմն. խօսիմ [2] Ոմն. իմոց ըստ ձեզ։ (9) Այսպէս ասէ Տէր Եհովայ [3] Ոմն. ի մէջ [4] Ոմն. Իսրայելի [5] Ոմն. կռոց [6] Ոմն. ի գայթակղութիւն

[7] Ոմն. իմ, ի սրբութիւնս սրբութեանց [8] Ոմն. և զպղծութիւնս իւրեանց զոր արարին։ (14) Սակայն կարգեսցից [9] Յոմն. [illegible] [10] Ոմն. գաւթին [11] Ոմն. ի դրունս գաւթին ներքնոյ եւ ի ներքս [12] Ոմն. մի՛ ածցեն ինչ ի քրտնել [13] Ոմն. ի գաւիթն արտաքին [14] Ոմն. արձակեսցեն, փոքրելով փոքրեսցեն [15] Ոմն. գաւիթն

ցեն ընտրել ի մէջ սրբոյն եւ պղծոյն,
եւ ի մէջ անարատին եւ արատաւորին։
24 Եւ ի վերայ դատաստանի [1]արեան նոքա
կացցեն քննել. [2]զարդարութիւնս իմ
արդարասցուսցեն, եւ զիրաւունս իմ ի-
րաւացուսցեն", եւ զօրէնս իմ եւ զհրա-
մանս իմ յամենայն տօնս պահեսցեն,
25 եւ զշաբաթս իմ սրբեսցեն։ Եւ ի դի
մարդոյ մի մտցեն պղծել. բայց թէ ի
հօր կամ ի մօր եւ յուստերս եւ ի դստերս,
եւս յեղբօր եւ ի քեռ՝ որ առն չիցէ
26 տուեալ՝ պղծեսցին։ Եւ յետ սրբելոյն
27 նորա՝ եւթն օր թուեսցէ իւր։ Եւ յո-
րում աւուր մտանիցէ ի սրբութիւն [3]սրա-
հին ներքնոյ պաշտել ի սրբութեանն՝
մատուսցէ [4]քաւութիւն, ասէ Տէր Ա-
28 ստուած։ Եւ ոչ" եղիցի նոցա ժառան-
գութիւն, զի ես եմ նոցա ժառան-
գութիւն. եւ կալուածք մի տացին նո-
ցա ի մէջ որդւոցն Իսրայելի, զի ես եմ
29 նոցա [5]ժառանգութիւն։ Եւ զզոհսն եւ
զվասն մեղացն եւ զվասն անգիտու-
թեանն՝ նոքա կերիցեն, եւ ամե-
նայն նուէրք Իսրայելի՝ նոցա լիցին։
30 Պտուղ ամենայնի եւ անդրանիկք ամե-
նեցուն եւ երախայրիք յամենայն պտղոյ
ձերոյ՝ քահանայիցն եղիցի. եւ զառա-
ջին մուտ արդեանց ձերոց տայջիք քա-
հանային՝ դնել օրհնութիւն ի վերայ տանց
31 ձերոց։ Զամենայն զմեռելոտի եւ զգա-
զանաբեկ ի թռչնոց եւ յանասնոց՝ մի
կերիցեն քահանայքն։

Գլ. ԽԵ

1 Եւ ի վիճակել ձեզ զերկիրն ի ժառան-
գութիւն՝ զատուսջիք պտուղ Տեառն
սուրբ յերկրէն քսան եւ հինգ հազար
յերկայնութիւն եւ տասն հազար ի լայ-
նութիւն՝ նուիրեալ եղիցի յամենայն
2 սահմանս նորա շուրջանակի։ Եւ եղիցի
յայնմանէ ի սրբութիւն՝ հինգ հարեւր
առ հինգ հարեւր չորեքկուսի շուրջա-
նակի. եւ յիսուն կանգուն [6]բացատացն
3 շուրջանակի։ Եւ յայսմ չափոյ չափեսցի
քսան եւ հինգ հազար յերկայնութիւն
եւ տասն հազար ի լայնութիւն, եւ ի
նմա եղիցի սրբութիւն սրբութեանցն.
4 Նուիրեալ յերկրէն եղիցի քահանայիցն
որ պաշտիցեն ի սրբութեանն, այնոցիկ
որ մերձենան պաշտել զՏէր. եւ եղիցի
նոցա տեղի [7]մի զատեալ ի տուն սրբու-
5 թեան իւրեանց՝ Քսան" եւ հինգ հազար
յերկայնութիւն եւ տասն հազար ի լայ-
նութիւն եւ Ղեւտացւոյն որ պաշտեն
ի տաճարին՝ եղիցի [8]ի կալուածս քաղա-
6 քի ի բնակութիւն։ Ըստ բնակութեան"
քաղաքի տացես՝ հինգ հազար ի լայնու-
թիւն, եւ քսան եւ հինգ հազար յեր-
կայնութիւն [9]ըստ երախայրեաց սրբու-
թեանցն՝ յամենայն տանէն Իսրայելի ե-
7 ղիցի։ Եւ առաջնորդին յայնմանէ եւ
անտի յերախայրիս սրբոցն ի նիստ քա-
ղաքին յանդիման երախայրեաց սրբու-
թեանցն, ընդդէմ բնակութեան քաղա-
քին ընդ կողմ ծովու. եւ ի ծովէն ընդ
արեւելս. եւ երկայնութիւն ըստ միոյ
վիճակաց ի սահմանացն որ ընդ ծովա-
կողմն, եւ լայնութիւն ըստ սահմանաց
8 երկրին որ ընդ արեւելս։ Եւ" եղիցի
նմա ի կալուածս ի մէջ Իսրայելի. եւ
ոչ եւս բռնան լիցին իշխանք [10]որդւոցն
Իսրայելի" ժողովրդեան իմում, եւ զեր-
կիրն [11]վիճակեսցեն ժառանգեսցեն տունն"
Իսրայելի ըստ ազգս իւրեանց։
9 Այսպէս ասէ Տէր Տէր. Շատ լիցի ձեզ,
իշխանքդ Իսրայելի. սրդ ի բաց արա-
րէք զանիրաւութիւն եւ զչուառու-
թիւն, իրաւունս եւ արդարութիւն ա-
րարէք, ի բաց մերժեցէք զբռնաւորու-
թիւն ի ժողովրդենէ իմմէ, ասէ Տէր
10 Աստուած։ Կշիռք արդար եւ [12]չափ ար-
դար եւ [13]կապիճ արդար եղիցի [14]չափոյ
11 ձերոյ։ Եւ կապիճ նոյն լիցի տալոյ եւ
առնլոյ. տասներորդն գրուի եղիցի կա-
պիճ, եւ տասներորդ գրուի կապիճն՝

[1]Յեբր. դատել [2]Եբր. ըստ իրաւանց իմոց դա-
տեսցին զնոսա [3]Եբր. գաւթին [4]Եբր. զվասն
մեղացն, ասէ Տէր Եհովայ։ (28) Եւ այս [5]Եբր.
կալուած [6]Եբր. արուարձանն

[7]Եբր. վասն տան, եւ սրբութիւն՝ վասն սրբու-
թեան։
(5) Եւ քսան [8]Եբր. ի կալուածս, ի քսան
սենեակք։ (6) Եւ ի կալուած [9]Եբր. առընթեր
երախայրեաց սրբութեանն. այս եղիցի ամենայն
տանն Իսրայելի։ (7) Իսկ վասն իշխանին, աստի և
անտի յերախայրիս սրբութեանն և ի կալուած
քաղաքին, յանդիման երախայրեաց սրբու-
թեանն, և յանդիման կալուածոյ քաղաքին, ի
ծագաց արեւմտից յարեւմուտս, եւ ի ծագաց
արեւելից յարեւելս կողմ և երկայնութիւն՝ ըստ
միոյ ի բաժնից ի սահմանէ անտի արեւմտից մին-
չեւ ի սահման անդր արեւելից։ (8) Յերկրին
[10]Եբր. իմ [11]Եբր. տացեն ցտունն [12]Եբր. արդու
[13]Եբր. մար [14]Եբր. ձեզ։ (11) Արդու եւ մար
եղիցին նովին չափով. մարն տարցի զտասներորդն

կշիռ ըստ գրուին եւ ըստ արդուին
12 եղիցի ։ Եւ կշիռն" քսան դանգ , եւ քսան
սիկղ եւ քսան եւ հինգ սիկղ , եւ [1]ի
քսան եւ ի հինգ սիկղէ" եղիցի ձեզ
մնաս մի ։
13 Եւ այս [2]պտուղ լիցի զոր զատանիցէք.
զվեցերորդ չափոյն ի գրուէ ցորենոյ ,
եւ զվեցերորդ արդուի ի քոռէ գարւոյ ։
14 Եւ հրաման ձիթոյ , քսոտ մի իւղոյ ,
տասներորդ սափորոյն, զի տասն քսոտն
15 է սափոր մի ։ Եւ ոչխար մի ի տասն
ոչխարէ՝ նուէրք յամենայն ազգացն Իս-
րայէլի ի զոհս եւ յողջակէզս քաւու-
թեան եւ փրկութեան ձերոյ", ասէ Տէր
16 Աստուած ։ Եւ ամենայն ժողովուրդ
երկրիդ տացէ զիրախայրիսն [3]ցառաջ-
նորդս Իսրայէլի ։
17 Եւ ՚ի ձեռն առաջնորդին" եղիցին
ողջակէզքն եւ զոհքն եւ [5]սպանդքն՝
ի տօնս եւ յամսագլուխս եւ ի շաբաթս
յամենայն տօնս տանն Իսրայէլի նա
մատուսցէ զվասն մեղացն եւ զզոհսն
եւ զողջակէզսն եւ [6]զվասն փրկու-
թեանն՝ քաւել զտունդ" Իսրայէլի ։
18 Այսպէս ասէ Տէր Աստուած . Յառաջ-
նում ամսեանն որ օր մի իցէ ամսոյն՝
առնուցուս զուարակ մի յանդւոյ անա-
19 րատ՝ քաւել զսրբութիւնն ։ Եւ առցէ
քահանայն յարենէ քաւութեանն , եւ
ցանեսցէ ի վերայ սեմոց տանն եւ ի
վերայ չորեցունց անկեանց [7]սաճարին
եւ ի վերայ" սեղանոյն, եւ ի վերայ սե-
20 մոց դրանն [8]ներքին սրահին ։ Եւ այս-
պէս արասցէ որ օր եւթն իցէ ամսոյն,
յամենայն յանդէտս յանցաւորէ եւ ի
տղայոց քաւել" զտունն ։
21 Եւ յամսեանն առաջնում՝ որ օր չորեք-
տասան իցէ ամսոյն, եղիցի ձեզ տօնն պա-
22 սեք , զեւթն օր բաղարջ կերիջիք ։ Եւ
արասցէ [9]առաջնորդն յաւուրն յայնմիկ
վասն իւր [10]եւ վասն տանն" եւ վասն
ամենայն ժողովրդեան երկրին զուարակ
23 մի յարջառոց վասն մեղաց ։ Եւ զեւթն
օր տօնին արասցէ ողջակէզս Տեառն ,
եւթն զուարակ եւ եւթն խոյ անարատ՝
աւուր աւուր՝ զեւթն օր . եւ վասն մե-
ղաց նոխազ մի յայծեաց աւուր աւուր .
24 [11]Եւ զոհ եւ նաչիհ գործեալ ըստ զուա-
րակին , եւ հաց գործեալ ըստ խոյին ,
25 եւ քսոտ մի եւղ ըստ հացին ։ Եւ
յամսեանն եօթներորդի՝ որ օր հնգետասան
իցէ ամսոյն , արասցեն առն ըստ օրի-
նակի եւթանց աւուրց , որպէս վասն
մեղացն եւ վասն ողջակիզացն, եւ ըստ
նաչհոյն եւ ըստ ձիթոյն ։"

## ԳԼ . ԽԶ

1 Այսպէս ասէ Տէր Աստուած . Դուռնն
[12]որ ի ներքնումն՝ սրահին" հայի ընդ
արեւելս՝ եղիցի փակեալ զվեց աւուրսն
արդոյս , եւ յաւուրն շաբաթու բացցի ,
2 եւ յաւուրն ամսագլխոյն բացցի ։ Եւ
մտցէ [13]առաջնորդն ընդ ճանապարհ
կամարի դրանն արտաքնոյ , եւ կացցէ
ի վերայ սեմոց դրանն . եւ արասցեն
վասն նորա ողջակէզս քահանայքն , եւ
զփրկութեանսն վասն" նորա . եւ երկիր
պագցէ ի վերայ սեմոց դրանն, եւ ելցէ.
եւ դուռն մի՛ փակեսցի մինչեւ ցերեկոյ։
3 Եւ երկիր պագանիցէ ժողովուրդ երկ-
րին առաջի մուտից դրանն յաւուր շաբա-
թուց եւ յամսագլուխս՝ առաջի Տեառն
4 Եւ [14]զողջակէզսն զոր մատուսցէ Տեառն
առաջնորդն յաւուր շաբաթուց" վեց ո-
5 րոջ անարատս եւ խոյ մի անարատ . Եւ
[15]մանիա եփեալ առ խոյն եւ առ որոջսն
եւ զոհս եւ տուրս ըստ ձեռին նորա ,

---

քոռի, արդուն եւս զտասներորդն քոռի . ըստ քոռին եղիցի չափ նոցա ։ (12) Եւ սիկղն [1]Եբր. հնգետասան սիկղ [2]Եբր. նուէր զոր նուիրիցէք. ի քոռէ ցորենոյ զվեցերորդ մասն արդուի, եւ ի քոռէ գարւոյ զվեցերորդ մասն արդուի ։ (14) Եւ կանոն ձիթոյ. ի մարէ ձիթոյ զտասներորդն մարի առ քոռ . ի խոմերէ, որ է տասն մար, զի տասն մար է խոմէր մի . (15) Եւ որոջ մի ի խաշանց յերկերիւրոց ի ջրարբեաց Իսրայէլի ի նուէր եւ յողջակէզ և ի խաղաղականս առ ի քաւելոյ զնոսա [3]Եբր. ցիշխանն [4]Եբր. ի վերայ իշխանին [5]Եբր. նուէր հեղմանն [6]Եբր. զխաղաղականն ի քաւել վասն տանն [7]Եբր. շրջանակի [8]Եբր. գաւթին ներքնոյ։ (20) Եւ այսպէս արասցես յեւթներորդումն ամսոյն վասն առն մոլորելոյ եւ տխմարի, և քաւեսջիք

[9]Եբր. իշխանն [10]ՅԵբր. պակասէ [11]Եբր. Եւ ընծայ հացի արդու մի առ զուարակ, եւ արդու մի առ խոյ արասցէ. եւ հիմէն մի ձէթ առ արդու ։ (25) Ի հնգետասաներորդումն՝ ամսոյն եւթներորդի ի տօնին արասցէ նոյնպէս աւուրս եւթն իբրեւ զվասն մեղացն, իբրեւ զողջակէզն, եւ իբրեւ զընծայն հացի եւ իբրեւ զձէթն ։ [12]Եբր. գաւթին ներքնոյ որ [13]Եբր. իշխանն ընդ ճանապարհ սրահի դրանն արտաքուստ , եւ կացցէ առ սեմս դրանն . եւ արասցեն քահանայքն զողջակէզ նորա, եւ զխաղաղականս [14]Եբր. զողջակէզն զոր մատուսցէ Տեառն իշխանն յաւուր շաբաթու եղիցի [15]Եբր. ընծայ հացի արդու մի առ խոյն եւ առ որոջսն ընծայ հացի որչափ բաւական իցէ ձեռն նորա, եւ եւղ հիմէն մի առ արդու

6 եւ քսան խեղոյ ըստ հացին՞։ Եւ յա-
ւուրն ամսամտից զուարակ մի՝ [1]որդի
պտուղամոր՞ անարատ. եւ վեց որոջքն
7 եւ խոյն անարատ եղիցին։ Եւ [2]նաշխն
ըստ զուարակին եւ նաշխն եւ մաննա
ըստ խոյին եւ ըստ որոջացն, որպէս եւ
պատրաստեսցի ի ձեռս իւր, եւ եւղ
8 ըստ նաշխոյն։ Եւ ի մտանել առաջնոր-
դին՝ ընդ ճանապարհ կամարի դրանն
մտցէ, եւ ընդ նոյն ճանապարհ դրանն՞
9 ելցէ։ Եւ յորժամ մտանիցէ ժողովուրդ
երկրին առաջի Տեառն ի տօնս, որ
մտանիցէ ընդ ճանապարհ դրանն հիւ-
սիսոյ երկիր պագանել, ելցէ ընդ ճա-
նապարհ դրանն հարաւոյ. եւ որ մտա-
նիցէ ընդ ճանապարհ դրանն հարաւոյ՝
ելցէ ընդ ճանապարհ դրանն հիւսիսոյ.
եւ մի՛ դարձցի ընդ ճանապարհ դրանն
ընդ որ եմուտ, այլ ուղղորդ ընդ նոյն
10 ելցէ։ Եւ [3]առաջնորդն ի մէջ նոցա՝ ի
մտանելն նոցա ընդ նոսին մտցէ, եւ
ընդ ելանելն նոցա՝ ընդ նոսին ելցէ։
11 Եւ ի տօնս եւ [4]ի ժողովս՝ եղիցի
մաննա եփեալ ըստ զուարակին, եւ
մաննա ըստ խոյին, եւ ըստ որոջացն,
որպէս պատրաստեսցի ի ձեռս նորա եւ
12 քսան մի խեղոյ ըստ հացին։ Ապա թէ
առնիցէ առաջնորդն զխոստովանութեան
ողջակէզս եւ զկամաւոր փրկութեան
Տեառն, բացցէ իւր զդուռնն որ հայի
ընդ արեւելս, եւ արասցէ զողջակէզսն
իւր եւ զվասն փրկութեանն, ըստ օրի-
նակին որպէս եւ առնիցէ յաւուր շա-
բաթուցն. եւ ելցէ, եւ փակեսցէ
զդրունսն յետ ելանելոյն իւրոյ։
13 Եւ բուծ մի տարեւոր անարատ ա-
րասցէ յողջակէզ Տեառն, հանապազօր
14 այգուն այգուն արասցէ զայն. Եւ մաննա
ընդ նմին այգուն այգուն՝ զվեցերորդ
մասն չափոյն, եւ երրորդ մասն քսանի
եւղ խառնեալ ի նաշխին մաննա Տեառն՝
15 հրաման յաւիտենական. Հանապազ մա-
տուցանիցեն զգառնն եւ զմաննայն,
եւ զեւղն արասցէ՞ այգուն այգուն ող-
ջակէզ հանապազորդ։
16 Այսպէս ասէ Տէր Տէր. Եթէ տացէ
[5]առաջնորդն պարգեւ միում յորդւոց
իւրոց ի ժառանգութենէ իւրմէ, եղիցի
այն որդւոց նորա ի կալուածս ժառան-
17 գութեան։ Եւ եթէ տացէ պարգեւ ի
ժառանգութենէ իւրմէ միում ի ծառայից
իւրոց, եղիցի նմա այն մինչեւ ցամին
թողութեան, եւ ապա դարձցի անդրէն
առ [6]առաջնորդն. բայց ժառանգութիւն
18 որդւոց նորա՝ նոցին եղիցի։ Եւ մի՛ առցէ
առաջնորդն ի ժառանգութենէ ժողո-
վրդեանն իւրոյ բռնադատել զնոսա.
այլ յիւրմէ կալուածոց եւ յիւրմէ ժա-
ռանգութենէ ժառանգեցուսցէ՞ որդւոց
իւրոց, զի մի՛ ցրուեսցի ժողովուրդն
իմ յիւրաքանչիւր [7]բնակութենէ։
19 Եւ տարաւ զիս ընդ ճանապարհ [8]դրանն
հարաւոյ ի պատշգամ՞ սրբութեանց
քահանայիցն՝ որ հայէր ընդ հիւսիսի,
20 եւ ահա անդ տեղի [9]զատեալ. Եւ ասէ
ցիս, Այս է տեղի յորում եփիցեն քա-
հանայքն զվասն անգիտութեանն եւ
զվասն մեղացն. անդ եփեսցեն [10]եւ
զմաննայն, ամենեւին մի՛ ելանել ի
սրահն՞ արտաքին սրբել զժողովուրդն։
21 Եւ եհան զիս [11]ի սրահն արտաքին, եւ
շրջեցոյց զիս ընդ չորս [12]կողմանս սրա-
հին. եւ ահա գաւիթ առ գաւիթս ընդ
22 չորս կողմանս սրահին։ Գաւիթն փոքու

[1] Ոմնք. յարջառոց [2] Ոմնք. մատուսցէ ընծայ հացի արդու մի առ զուարակ, եւ արդու մի առ խոյ եւ վասն գառանց որչափ բաւական իցէ ձեռն նորա, եւ եւղ հիմէն մի առ արդու։

(8) Եւ ի մտանել իշխանին՝ ընդ ճանապարհ սրահի դրանն մտցէ, եւ ընդ նոյն ճանապարհ

[3] Ոմնք. իշխանն [4] Ոմնք. յաւուրս տարեկանաց ընծայն հացի եղիցի արդու մի առ զուարակ և արդու մի առ խոյ, եւ վասն գառանց որչափ բաւական իցէ ձեռն նորա, եւ եւղ հիմէն մի առ արդու։ (12) Եւ եթէ մատուսցէ իշխանն ողջակէզ կամաւոր, կամ զոհ խաղաղական Տեառն՝ բացցեն նմա զդուռնն որ հայի ընդ արեւելս, և արասցէ զողջակէզ իւր եւ զխաղաղականս իւր, որպէս առնէ յաւուրն շաբաթու, և ելցէ, եւ փակեսցեն զդուռնն յետ ելանելոյ նորա։

(13) Եւ գառն մի տարեւոր անարատ արասցես ողջակէզ օր ըստ օրէ Տեառն. այգուն այգուն արասցես զայն։ (14) Եւ հացի ընծայ արասցես ընդ նմա այգուն այգուն, զվեցերորդ մասն արդուի, եւ զերրորդ մասն հիմենի եւղ խառնել ի նաշխին. հացի ընծայ է այն Տեառն օրէն յաւիտենական՝ մշտնջենաւոր։ (15) Եւ արասցեն զգառնն եւ զընծայն հացի և զեւղն

[5] Ոմնք. իշխանն [6] Ոմնք. իշխանն, զի ժառանգութիւն նորա որդւոց նորա եղիցի։ (18) Եւ մի՛ առնուցու իշխանն ի ժառանգութենէ ժողովրդեանն զրկել զնոսա ի կալուածոց իւրեանց. ի կալուածոց իւրոց տացէ ժառանգութիւն [7] Ոմնք. ի կալուածոյ իւրմէ [8] Ոմնք. որ ի թիկանց դրանն ի դահլիճս [9] Ոմնք. յետուստ յարեւմուտս կոյս [10] Ոմնք. զընծայն հացի, զի մի՛ հանցեն ի գաւիթն [11] Ոմնք. ի գաւիթն [12] Ոմնք. անկիւնս գաւթին. եւ ահա գաւիթ յանկեան գաւթի, գաւիթ յանկեան գաւթի։ (22) Ի չորեսին անկիւնս գաւթին՝

քառասուն կանգուն երկայնութիւն եւ
երեսուն կանգուն լայնութիւն, մի չափ
23 էր չորեցունց՝՝։ Եւ պատշգամք չուր-
ջանակի զչորեքումբք, եւ խոհակերոցք
շինեալք ի ներքոյ պատշգամացն չուր-
24 ջանակի։ Եւ ասէ ցիս, Այս տունք են
խոհակերաց՝ ուր հասուցանիցեն պաշ-
տօնեայքն տանն զզենլիս ժողովրդեանն։

## Գլ. ԽԷ

1 Եւ եմոյծ զիս առաջի դրան տաճարին,
եւ ահա ելանէր ջուր ի ներքոյ [1]մարա-
գուրաց տաճարին ընդ արեւելս, զի
երեսք տաճարին հայէին ընդ արեւելս.
եւ ջուրն հոսէր յաջմէ կողմանէ [2]տա-
2 ճարին հիւսիսոյ ի սեղանն կոյս՝՝։ Եւ
եհան զիս ընդ ճանապարհ դրանն հիւ-
սիսոյ, եւ շրջեցոյց զիս ընդ ճանապարհ
դրանն արտաքնոյ առ դրամբն արտաք-
նով՝ որ հայէր ընդ արեւելս. եւ ահա
ջուրն հոսէր յաջմէ կողմանէ։
3 [3]Եւ իբրեւ զելս առն դէմ յանդիման,
եւ չափ ի ձեռին իւրում. եւ չափեաց
հազար՝ չափովն, եւ անց ընդ ջուրն՝
4 ջուր յորդութեան. Եւ չափեաց հազար՝
չափովն, եւ անց ընդ ջուրն, եւ հար-
կանէր ջուրն մինչեւ ցերանսն. եւ չափ-
եաց հազար՝ չափովն, եւ անց ընդ ջուրն,
եւ հարկանէր ջուրն մինչեւ ցգօտին.
5 Եւ չափեաց հազար՝ չափովն զուխն,
եւ ոչ կարէր՝՝ անցանել, զի յորդեաց
ջուրն իբրեւ զյորձանս հեղեղաց ընդ որ
ոչ ոք անցանիցէ։
6 Եւ ասէ ցիս, Տեսե՞ր որդի մարդոյ.
եւ դարձոյց զիս նեւ տարաւ յափն գետոյն։
7 Եւ ի շրջելն անդ իմում, եւ ահա յափն
գետոյն ծառաստանք բազում յոյժ յայսկոյս
8 յայնկոյս։ Եւ ասէ ցիս. Ջուրս այս որ
ելանէ ի կողմ [4]Գալիլեացւոց ընդ արեւելս,
եւ իջանէ յԱրաբիա, եւ գայ մինչեւ
ցծով ի ջուրց ելիցն, եւ բժշկեսցէ զջուրս՝՝։
9 Եւ եղիցի ամենայն շունչ [5]անասնոց ի
բոց թքելոց, յամենայնի յորոց վերայ
եկեսցէ գետն՝՝ կենդանի լիցի. եւ եղիցի
անդ ձուկն բազում յոյժ, զի հասեալ
անդր ջրոյս այսորիկ՝ բժշկեսցէ. եւ կեն-
դանասցի յորոյ վերայ հասցէ գետն [6]եւ
10 կեցցէ՝՝։ Եւ կացցեն ի նմա [7]որսորդք
յԵնգադեայ մինչեւ ցԵնգադիմ. ձգանք
ուռկանաց առանձինն եղիցին, եւ ձկունք
նորա [8]իբրեւ զձկունս ծովուն մեծի,
11 եւ բազմութիւն բազում յոյժ. [9]Ցեխս
նորա եւ ի դարձս նորին, եւ ի համ-
բառնալ՝՝ նորին մի՛ մրրեսցին, այլ յաղ
12 մատնեսցին։ Եւ առ գետովն ելցէ զա-
փամբն յայսկոյս յայնկոյս՝ ամենայն ծառ
ուտելի, եւ մի՛ [10]հնասցի չուրջ զնովաւ՝՝,
եւ մի՛ պակասեսցի պտուղ նորա, [11]եւ
զզալարութիւն իւր յառաջագոյն արձա-
կեսցէ՝՝. զի ջուրք նորա ի սրբութեանց
ելանիցեն. եւ եղիցի պտուղ նոցա ի
կերակուր, եւ [12]ելք նոցա ի բժշկութիւն։
13 Այսպէս ասէ Տէր Աստուած. Այս են
սահմանք [6]ժառանգութեան երկրին, զոր
ժառանգեցուցանիցեն երկոտասան ազ-
գացն [13]որդւոյն Իսրայէլի յաւելուած
14 վիճակաց՝՝. Եւ ժառանգեսցեն զնա իւ-
րաքանչիւր ոք՝ որպէս եւ եղբայրն իւր,
յոր ամբարձի զձեռն իմ տալ հարցն [14]նո-
ցա. եւ անկցի երկիրն այն ձեզ ի վի-
15 ճակ ժառանգութեան։ Եւ այս են սահ-
մանք երկրին. Որ ընդ կողմ հիւսիսոյ,
ի ծովէն մեծէ, [15]որ իջանէ եւ մեկնէ ի
16 մուտս Եզգադայ Եւ Եմաթայ եւ Բերով-
թայ, Սաբարսիմայ՝՝ ի մէջ սահմանացն
Դամասկոսի, եւ ի մէջ սահմանացն
Եմաթայ, [16]բնակութիւնք Աւնանայ որ
17 են ի սահմանս Աւրանացւոյն։ Այս են
սահմանք ի ծովէն ի հանգրուանէ Աւ-
նանայ՝ սահմանք Դամասկոսի. եւ ընդ
կողմն հիւսիսոյ ըստ հիւսիսոյ, եւ սահ-
մանքն Եմաթայ՝ սահմանք հիւսիսոյ,

զուիթք կցեալք՝ քառասուն կանգուն յերկայ-
նութիւն և երեսուն ի լայնութիւն՝ մի չափ չորե-
ցունց յանկիւնսն [1]Եբր. սեմոց [2]Եբր. ի ներքոյ
տանն ի հարաւոյ սեղանոյն [3]Եբր. Այրն յորոյ ձե-
ռին էր լար՝ել ընդ արեւելս, և չափեաց հազար
կանգուն, եւ անցոյց զիս ընդ ջուրսն, ջուրքն
մինչեւ ի գարշապարս. (4) Եւ չափեաց հազար
եւս, և անցոյց զիս ընդ ջուրսն, ջուրքն մինչեւ ի
ծունկս. չափեաց հազար եւս, և անցոյց զիս,
ջուրքն մինչեւ ի մէջս. (5) Դարձեալ չափեաց հա-
զար, եղեւ գետ այնպիսի մինչեւ չկարել ինձ
[4]Եբր. արեւելից և իջանէ ի դաշտն եւ մտանէ ի
ծովն. յելանելն ի ծովն բժշկին ջուրքն

[5]Եբր. անասնոց որ սողայ, ամենայն ուրեք ուր եւ
երթան գետքն, [6]Յեբր. պակասէ [7]Եբր. ձկնորսք
[8]Եբր. ազգի ազգի եղիցին, իբրեւ [9]Եբր. Մօ-
րուտք նորա և ճահիճք [10]Եբր. թառամեսցի
տերեւ նորա [11]Եբր. յամիսս իւր տացէ երա-
խայրիս [12]Եբր. տերեւք [13]Եբր. Իսրայելի.
Յովսեփայ են կրկին չափք [14]Եբր. ձերոց [15]Եբր.
ընդ ճանապարհ Եթղոնայ ի մուտս Սեդադայ
(16) Եմաթ, Բերոթա, Սիբրայիմ որ [16]Եբր. յԱսեր-
աթթիկոն։ (17) Եւ սահմանն եղիցի ի ծովէ
մինչեւ յԱսար Ենան, սահմանք Դամասկոսի, և
ընդ կողմն հիւսիսոյ ի հիւսիս՝ սահմանք Եմա-

18 Դէմ յանդիման՝՝ արեւելից ի մէջ Աւրա-
նացւոցն եւ ի մէջ Դամասկոսի, ի մէջ
Գաղաադացւոցն եւ ի մէջ երկրին Իսրա-
յելի, [1]Յորդանան մեկնէ ընդ ծովակողմ
արեւելից ընդ ափամբ ստորնոյն՝՝. այս ընդ
19 արեւելս։ Եւ ընդ հարաւ, առ հարա-
ւով [2]ի Թեմանայ եւ յարմաւաստանէ
մինչեւ ի ջուրն Մարիմովթ Կադէս՝՝ որ
ձգի ի ծովն մեծ. այս բաժին հարաւա-
20 յին, եւ առ հարաւով։ Եւ [3]սոյն բաժին
ծովուն մեծի, որ որոշէ՝՝ մինչեւ հան-
դէպ մտիցն Եմաթայ, [4]մինչեւ ի մուտս
նորին. այս ինքն են ընդ ծովակողմն
Եմաթայ՝՝։
21 Եւ բաժանեսջիք զերկիրն զայն [5]նո-
22 ցա, եւ՝՝ ազգացն Իսրայելի. Արկջիք
զնա ի վիճակս, ձեզ եւ եկացն, պան-
դխտացն որ ի միջի ձերում, որք ծնան
որդիս ի միջի ձերում. եւ եղիցին ձեզ
իբրեւ այգրէնածինք ի մէջ որդւոցն Իս-
րայելի, եղիցին ընդ ձեզ, [6]կերիցեն
ժառանգութեամբ՝՝ ի մէջ ազգացդ Իս-
23 րայելի։ Եւ [7]եղիցին յազգ պանդխտաց
ի մէջ պանդխտացն՝ որ կցեն ի ձեզ՝՝, անդ
տայջիք նոցա ժառանգութիւն, ասէ Տէր
Աստուած։

ԳԼ. ԽԸ

1 Եւ այս են [8]սահմանք ցեղիցն։ Ի սկզ-
բանէ կողմանն հիւսիսոյ ըստ կողման
զառիթափին, որ զատանէ ընդ մուտս
Եմաթու հանդիպաւանին Աւնանու. սահ-
ման Դամասկոսի առ հիւսիսով ըստ կող-
ման բնակութեանն Եմաթայ. եւ եղի-
ցի նոցա՝՝ արեւելակողմ մինչեւ [9]ի ծո-
2 վակողմ՝ Դանայ բաժին մի։ Եւ ի սահ-
մանաց անտի Դանայ յարեւելակողմ
մինչեւ ի ծովակողմ՝ Ասերայ բաժին մի։
3 Եւ ի սահմանացն Ասերայ յարեւելից
կուսէ մինչեւ ցծովակողմ՝ Նեփթաղի-
4 մայ բաժին մի։ Եւ ի սահմանացն Նեփ-
թաղիմայ յարեւելից կուսէ մինչեւ ցծո-
5 վակողմ՝ Մանասէի բաժին մի։ Եւ ի
սահմանացն Մանասէի յարեւելից կուսէ
մինչեւ ցծովակողմ՝ Եփրեմի բաժին մի։
6 Եւ ի սահմանացն Եփրեմի յարեւելից
կուսէ մինչեւ ի ծովակողմ՝ Ռուբենի
7 բաժին մի։ Եւ ի սահմանացն Ռուբենի
յարեւելից կուսէ մինչեւ ցծովակողմ՝
8 Յուդայի բաժին մի։ Եւ ի սահմանացն
Յուդայի յարեւելից կողմանէ մինչեւ
ցծովակողմ՝ եղիցի [10]պտուղ նուիրաց
քսան եւ հինգ հազար յերկայնութիւն
եւ տասն հազար ի լայնութիւն՝՝ իբրեւ
զմի ի վիճակաց ի կողմանցն արեւելից
մինչեւ ցծովակողմն. եւ եղիցի [11]սուրբ
9 ի մէջ նոցա։ Պտուղ զոր նուիրիցեն՝՝
Տեառն, յերկայնութիւն քսան եւ հինգ
հազար եւ ի լայնութիւն տասն հազար։
10 [12]Եղիցի պտուղ՝՝ սրբութեանց քահանա-
յիցն, ընդ [13]հարաւակողմն՝ յերկայնու-
թիւն քսան եւ հինգ հազար, եւ ընդ
ծովակողմն՝ ի լայնութիւն տասն հազար,
եւ ընդ արեւելս՝ ի լայնութիւն տասն
հազար, եւ ընդ [14]հիւսիսակողմն՝ յեր-
կայնութիւն քսան եւ հինգ հազար. եւ
եղիցի [15]սահման սրբութեանցն ի միջի
11 նոցա՝՝ Քահանայիցն սրբեցելոց, որդւոցն
Սադովկայ, որք [16]պահեն զպահպանու-
թիւնս սրբոյ Տեառն՝՝, որք ոչ մոլորե-
ցան ի մոլորութիւն որդւոցն Իսրայելի՝
12 որպէս մոլորեցան Ղեւտացիքն։ Եւ ե-
ղիցի նոցա [17]պտուղ տուեալ ի պտղոյ՝՝
երկրին սրբութիւն սրբութեանցն, ի
սահմանաց Ղեւտացւոցն։
13 Եւ Ղեւտացւոցն որ [18]շհեա սահմա-
նաց՝՝ քահանայիցն՝ իցէ յերկայնութիւն
քսան եւ հինգ հազար, եւ ի լայնու-
14 թիւն տասն [19]հազար. Ոչ վաճառեսցի ի
նոցանէն, եւ ոչ չափեսցի, եւ ոչ առցի
առաջին արդեանց՝՝ երկրին. զի սրբու-
թիւն Տեառն է։
15 Բայց հինգ հազարն աւելորդ լայնու-

Թայ. այս է կողմն հիւսիսոյ։ (18) Եւ կողմն
[1]Եբր. Յորդանան եղիցի. ի սահմանէն ցծովն ա-
րեւելից չափեսջիք [2]Եբր. ի Թամարայ մինչեւ ի
ջուրն Հակառակութեան ի Կադէս, մինչեւ ի
հեղեղատն [3]Եբր. կողմն արեւմտեան՝ ծովն մեծ
ի սահմանէն [4]Եբր. այս է կողմն արեւմտից
[5]Եբր. ձեզ, [6]Եբր. ժառանգորդք [7]Եբր.
եղիցի ի ցեղին յորում պանդխտեսցի պանդուխտն
ընդ նմա [8]Եբր. անուանք ցեղիցն։ Ի ծա-
գաց հիւսիսոյ առ ճանապարհաւն Եթղոնայ
յԵմաթ կոյս՝ մինչեւ յԱսար-Ենան, սահման
Դամասկոսի ի հիւսիսակողմն առ եզր Եմաթայ.
եւ եղիցի նմա [9]Կամ, յարեւմուտս, ծովե-
ն է Ներքոյ

[10]Եբր. նուէրն զոր նուիրիցէք քսան եւ հինգ հա-
զար չափ ի լայնութիւն և երկայնութիւն [11]Եբր.
սրբութիւն ի մէջ նորա։ (9) Նուէրն զոր նուիրիցէք
[12]Եբր. Եւ այս եղիցի նուէր [13]Եբր. հիւսիսա-
կողմն [14]Եբր. հարաւակողմն [15]Եբր. սրբու-
թիւն Տեառն ի միջի նորա։ [16]Եբր. պահեցին
զպահպանութիւն իմ [17]Եբր. նուէր ի նուիրաց
[18]Եբր առ սահմանաւ [19]Եբր. հազար. ամե-
նայն երկայնութիւն քսան եւ հինգ հազար, և
լայնութիւն՝ տասն հազար։ (14) Եւ ոչ վաճա-
ռեսցեն ի նմանէ, եւ ոչ փոխեսցին, եւ ոչ դար-
ձուսցեն յայլ զերախայրի

թեամբ առ քսան եւ հինգ հազարին,
[1]պատուար արտաքոյ քաղաքին լինիցի”
ի բնակութիւն եւ յարձակամայրս նո-
րին. եւ եղիցի քաղաքն ի միջի նորա։
16 Եւ այս է չափ նորա. ի կողմանէ հիւ-
սիսոյ՝ չորք հազար եւ հինգ հարեւր,
եւ ի կողմանէ հարաւոյ՝ չորք հազար եւ
հինգ հարեւր, եւ ի կողմանէ արեւելից՝
չորք հազար եւ հինգ հարեւր, եւ ի կող-
մանէ ծովուն՝ չորք հազար եւ հինգ հա-
17 րեւր։ Եւ եղիցի բացատ քաղաքին ընդ
հիւսիսի՝ երկերիւր եւ յիսուն, եւ ընդ
հարաւ՝ երկերիւր եւ յիսուն, եւ ընդ
արեւելս՝ երկերիւր եւ յիսուն, եւ ընդ
18 ծով՝ երկերիւր եւ յիսուն։ Եւ աւելորդ
երկայնութեանն մերձ առ [2]երախայրեօք
սրբութեանցն տասն հազար ընդ արե-
ւելս, եւ տասն հազար ընդ ծով. եւ
[3]եղիցին երախայրիք ի սրբութեանն”. եւ
եղիցին արդիւնք նորա ի հաց գործաւորի
19 քաղաքին։ Եւ գործաւորք քաղաքին գոր-
ծեսցեն զնա յամենայն ցեղից Իսրայելի։
20 Եւ ամենայն [4]պտուղ քսան եւ հինգ
հազար՝ առ քսան եւ հինգ հազար. չո-
րեքկուսի [5]զատանիջիք զպտուղ սրբու-
թեանն ի բնակութենէ” քաղաքին։
21 Եւ աւելորդն [6]նորին՝ գլխաւորին ե-
ղիցի. եւ անտի ի պտուղ սրբութեանն,
եւ ի նիստ քաղաքին յանդիման նորին,
քսան եւ հինգ հազար յերկայնութիւն”
մինչեւ ի սահմանս արեւելից կողմանն,
եւ ի ծովակողմ դէմ յանդիման [7]նորին,
քսան եւ հինգ հազար” մինչեւ ի սահ-
մանս ծովակողմանն մերձ [8]առ վիճակ
գլխաւորին։ Եւ եղիցի պտուղ” սրբու-
թեանցն եւ սրբութիւն տաճարին ի մէջ
22 նորա։ Եւ [9]ի ժառանգութենէ Ղեւտաց-
ւոցն, եւ ի բնակութենէ քաղաքին՝
միջոցն գլխաւորացն եղիցի. եւ” ի մէջ
սահմանացն Յուդայ, եւ ի մէջ սահմա-
նացն Բենիամինի՝ [10]գլխաւորին եղիցի։
23 Եւ աւելորդ ցեղիցն՝ ի կողմանցն ա-
րեւելից մինչեւ ցծովակողմ՝ Բենիամի-
24 նի բաժին մի։ Եւ ի սահմանացն Բե-
նիամինի՝ ի կողմանցն արեւելից մին-
չեւ ի ծովակողմ՝ Շմաւոնի բաժին մի։
25 Եւ ի սահմանացն Շմաւոնի ի կողմանցն
արեւելից մինչեւ ի ծովակողմ՝ Իսա-
26 քարայ բաժին մի։ Եւ ի սահմանացն Ի-
սաքարայ՝ ի կողմանցն արեւելից մին-
չեւ ի ծովակողմ՝ Զաբուղոնի բաժին
27 մի։ Եւ ի սահմանացն Զաբուղոնի ի
կողմանցն արեւելից մինչեւ ի ծովա-
28 կողմ՝ Գադայ բաժին մի։ Եւ ի սահմա-
նացն Գադայ մինչեւ դհարաւ եղիցի
սահմանք նորա, [11]ի Թեմանայ եւ ի ջրոցն
Բարիմթ Կադէսի՝ ժառանգութիւն մի
29 մինչեւ ցծովն” մեծ։ Այս երկիր է զոր
բաժանիցէք վիճակաւ ազգացն Իսրա-
յէլի, եւ այս բաժինք նոցա, ասէ Տէր
Աստուած։
30 Եւ այս ելամուտք քաղաքին. ընդ կողմ
հիւսիսոյ չորք հազար եւ հինգ հարեւր
31 չափովն։ Եւ դրունք քաղաքին ըստ ա-
նուանց ազգացն Իսրայէլի. դրունք ե-
րեք ընդ կողմ հիւսիսոյ. դուռն մի Ռու-
բենի եւ դուռն մի Յուդայ եւ դուռն
32 մի Ղեւեայ։ Եւ ընդ կողմ արեւելից
չորք հազարք եւ հինգ հարեւր չափովն,
եւ դրունք երեք. դուռն մի Յովսեփայ
եւ դուռն մի Բենիամինի եւ դուռն մի
33 Դանայ։ Եւ ընդ կողմ հարաւոյ չորք
հազարք եւ հինգ հարեւր չափովն, եւ
դրունք երեք. դուռն մի Շմաւոնի եւ
դուռն մի Իսաքարայ եւ դուռն մի Զա-
34 բուղոնի։ Եւ ընդ կողմն ծովու չորք
հազար եւ հինգ հարեւր չափովն, եւ
դրունք երեք. դուռն մի Գադայ եւ
դուռն մի Ասերայ եւ դուռն մի Նեփ-
35 թաղիմայ։ Շուրջ շրջանակաւ՝ ութու-
տասն հազար. եւ անուն քաղաքին
[12]յորմէհետէ լինիցի, Անդ Տէր եղիցի ա-
նուն նորա”։

[1]Եբր. անասունք եղիցի վասն քաղաքին [2]Եբր. նուիրաւ [3]Եբր. եղիցի մերձ առ նուէր սրբութեանն [4]Եբր. նուէր [5]Եբր. նուիրեսջիք զնուէր սրբութեանն ընդ կալուածոյ [6]Յեբր. [illegible] [7]Եբր. վասն իշխանին աստի եւ անտի նուիրին սրբութեան եւ կալուածոյ քաղաքին, յանդիման հնգից եւ քսանից հազարաց նուիրին [8]Եբր. ի բաժինսն՝ վասն իշխանին եղիցի։ Եւ եղիցի նուէր [9]Եբր. ի կալուածոյ Ղեւտացւոցն, եւ ի կալուածոյ քաղաքին որ է ի մէջ այնր որ իշխանին է,

[10]Եբր. իշխանին [11]Եբր. ի Թամարայ մինչեւ ի ջուրսն Հակառակութեան ի Կադէս, մինչեւ ի հեղեղատն որ էջանէ ի ծով անդր [12]Եբր. յօրէ անտի եղիցի՝ Եհովայ Շամմա· այսինքն Տէր անդ։



# ԳԼՈՒԽՔ ԴԱՆԻԷԼԻ ՄԱՐԳԱՐԷԻ

| | Գլ. | Համ. |
| --- | --- | --- |
| Մարգարէանայ նախ վասն Շուշանայ, փրկէ զըրպարտեալ արդարն, եւ մահու մատնէ զանօրէն ծերսն։ | ԺԳ. | 1 |
| Ընտրին Դանիէլեանք եւ առնին յանձն ներքինապետին, եւ ուսեն ուսումն. եւ ի ժամանակի իբրեւ կացին առաջի թագաւորին՝ երեւեցան գտան գեղեցկագոյն քան զամենեսին։ | Ա. | 1 |
| Տեսանէ երազ Նաբուքոդոնոսոր. եւ իբրեւ ի վարանս մտին եւ չկարէին գիտել մոգքն զերազն և զմեկնութիւնն, հրամայէ կոտորել զնոսա. եւ ի տագնապի կացին և Դանիէլեանք, եւ ապրեցոյց զնոսա Աստուած. քանզի յայտնեաց Դանիէլի զգիտութիւն երազոյն։ | Բ. | 1 |
| Մտանէ Դանիէլ եւ ասէ թագաւորին զերազն եւ զմեկնութիւն նորա։ Իսկ վէմն որ հատաւ առանց ձեռին՝ Քրիստոս է, զի առանց ամուսնութեան ծնաւ ի կուսէն։ | Բ. | 24 |
| Կանգնեաց զպատկերն Նաբուքոդոնոսոր, եւ հրամայէ ամենեցուն երկիր պագանել. և զերիս մանկունսն արկանէ ի հնոց, վասն զի ոչ պագին երկիր պատկերին. իբրեւ որ շուրջ զհնոցաւն էին սատակեցան, եւ նոքա ապրեցան եւ օրհնէին զԱստուած. կոչեաց զնոսա՝ ետես կենդանիս եւ զարմացաւ, եւ փառաւոր արար զԱստուած. եւ զնոսա իշխանութեամբն Հրէից պատուեաց. եւ հրաման ետ՝ թէ որ հայհոյէ զԱստուած՝ մահու մեռցի։ | Գ. | 1 |
| Տեսանէ այլ երազ Նաբուքոդոնոսոր, եւ ի տարակուսի է միւսանգամ. ասէ իմաստնոցն Բաբելացւոց, եւ ոչ գիտացին. մեկնէ զերազն Դանիէլ. եւ խրատ թագաւորին՝ զանօրէնութիւնս իւր ողորմութեամբ քաւել. եւ յետ բազում ժամանակաց եղ ի գլուխ երազն, եւ օրհնեաց զԱստուած Նաբուքոդոնոսոր։ | Դ. | 1 |
| Ի մտանել սուրբ սպասուցն ի հրամանէ Բաղտասարայ արքայի որդւոյ Նաբուքոդոնոսորայ, մինչդեռ ըմպէին նորօք կոչնականքն, եւ թաթ ձեռին եւ գրեաց յորմն. իբրեւ զայն եւս տարակուսէին ճանաչել իմաստունքն Բաբելացւոց, եկն Դանիէլ, ծանեաւ զգիրն եւ մեկնեաց. զգեցաւ ծիրանիս, եւ արկին մանեակ ոսկի ի պարանոցի նորա. և քարոզ կարդացաւ՝ լինել երրորդ իշխան թագաւորութեան նորա։ | Ե. | 1 |
| Թագաւորեաց Դարեհ Մար, եւ կացոյց իշխան զԴանիէլ. բանադատէր թագաւորն ի նախարարացն հաստատել հրաման, զի եթէ իշխեսցէ ոք խնդրել խնդրուածս յԱստուծոյ կամ ի մարդոյ, բայց միայն յարքայէ մինչեւ ցերեսուն օր՝ անկցի ի գուբն առիւծուց։ Իբրեւ այնպէս կարգէր, սպասէին Դանիէլի մինչդեռ կայր յաղօթս, եւ չարախօսէին. կուտէին ի վերայ թագաւորին, եւ ստիպէին զնա արկանել ի գուբ, եւ արկ. եւ կանխեաց եկն եգիտ զնա կենդանի, եհան զնա ի գբոյն. և զչարախօսն կանամբք հանդերձ մատնեաց ի սատակումն առիւծուցն. եւ հրաման ետ երկնչել յԱստուծոյ։ | Ե. | 31 |
| Տեսանէ զտեսիլ գազանացն. առիւծով՝ զթագաւորութիւնն Բաբելացւոց, արջով՝ զՄարաց եւ զՊարսից, ընձու՝ զՄակեդոնացւոցն, եւ չորրորդիւն՝ զՀռովմայեցւոցն։ Մարգարէանայ վասն Քրիստոսի եւ վասն Նեռինն եւ Անտիոքու ամպարշտի. զի նա է եղջեւրն փոքրիկ որ ընկէց զերիսն՝ որ յառաջ քան զնա էին։ | Է. | 2 |
| Մարգարէանայ թէ զիարդ Աղեքսանդրոս Մակեդոնացի քակեաց զթագաւորութիւնն Պարսից. խոյ՝ զթագաւորսն Պարսից ասէ, եւ քօշ՝ զԱղեքսանդրոս Մակեդոնացի։ Աստ կան եւթանասուն եւթներորդքն։ | Ը. | 2 |
| Իսկ վերջին տեսիլն՝ ուր զհարաւային տիկնոջէն ասէ՝ ի Մակաբայեցւոց գիրսն գտանի. յորում եւ վասն Նեռինն եւ կատարածի։ | Ժ. | 1 |
| Զբէլ կործանէ, զվիշապն սպանանէ, և ի գուբն արկանի եւ ապրէ. եւ որք պատճառք արկանելոյն նորա եղեն՝ արկան ի գուբն եւ ծախեցան յառիւծուցն։ | ԺԴ. | 2 |



# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ԴԱՆԻԵԼԻ

## ԳԼՈՒԽ ԺԳ[1]

1 Եւ էր այր մի բնակեալ ի Բաբե-
լոն, եւ անուն նորա Յովակիմ։
2 Եւ առ իւր կին՝ անուն Շուշան, դուստր
Քեղկեայ, գեղեցիկ յոյժ եւ երկիւղած
3 ի Տեառնէ։ Եւ ծնողք նորա արդարք,
եւ ուսուցին զդուստր իւրեանց ըստ
4 օրինացն Մովսիսի։ Եւ էր Յովակիմ մե-
ծատուն յոյժ. եւ էր նորա բուրաստան
մերձ յապարանս իւր. եւ առ նա ժո-
ղովէին Հրեայք, զի փառաւորագոյն էր
5 քան զամենեսեան։ Եւ երեւեցան եր-
կու ծերք ի ժողովրդենէ անտի՝ դատա-
ւորք տարւոյն այնմիկ, զորոց խօսե-
ցաւ Տէր, եթէ Ել անօրէնութիւն ի Բա-
բելոնէ ի ծերոցն դատաւորաց, որ հա-
6 մարէին առաջնորդել ժողովրդեանն։ Եւ
նոքա հանապազորդէին ի տունն Յովա-
կիմայ, եւ գային առ նոսա ամենեք-
7 եան ի դատաստան։ Եւ լինէր իբրեւ
ժողովուրդն մեկնէր զհասարակ աւուրբք՝
մտանէր Շուշան եւ զգնայր ի բուրաս-
8 տանի առն իւրոյ։ Եւ տեսանէին զնա
երկոքին ծերքն հանապազ՝ զի մտանէր
9 եւ զգնայր, եւ ցանկացան նմա։ Եւ դար-
ձուցին զմիտս իւրեանց, եւ խոտորե-
ցուցին զաչս իւրեանց՝ չհայել յերկինս
10 եւ չյիշել զարդար դատաստանս։ Եւ
էին երկոքեան հարեալ ի նմա, եւ չպատ-
11 մէին միմեանց զցաւս իւրեանց, Զի
պատկառէին պատմել զցանկութիւնն
իւրեանց. քանզի կամէին լինել ընդ
12 նմա։ Եւ սպասէին նմա սաստիկ հանա-
13 պազ տեսանել զնա։ Եւ ասեն ցմի-
մեանս, Երթիցուք ի տուն, զի ճաշոյ
14 ժամ է։ Ելին եւ մեկնեցան ի միմեանց.
եւ դարձեալ անդրէն եկին միաբանգամ
առ միմեանս։ Եւ հարցեալ միմեանց
զպատճառսն, խոստովան եղեն զցանկու-
թիւնն իւրեանց. ապա եդեն ժամադիրք
միմեանց՝ թէ ե՞րբ կարասցեն զնա միայն
15 գտանել։ Եւ եղեւ ի սպասելն նոցա նմա
ի դիպող աւուր, եկն եմուտ երբեմն
որպէս յերէկն եւ յեռանդն՝ երկու միայն
աղջկամբք, եւ ցանկացաւ լուանալ ի
16 բուրաստանի անդ. քանզի տօթ էր. Եւ
չէր ոք անդ, բայց միայն երկու ծերքն
17 թաքուցեալք՝ որ սպասէին նմա։ Եւ
ասէ ցաղջկունսն, Երթայք բերէք ինձ
եւղ եւ օճառ, եւ զդուրս բուրաստանիս
18 փակեցէք, զի լուացայց։ Եւ արարին
որպէս ասաց նոցա. փակեցին զդուրս
բուրաստանին, եւ ելին ի կողմանէ
դրանցն՝ բերել զոր ինչ հրամայեաց նո-
ցա. եւ ոչ տեսին զծերսն, քանզի թա-
19 քուցեալ էին։ Եւ եղեւ իբրեւ ելին
աղջկունքն, յարեան երկու ծերքն եւ
20 դիմեցին ի վերայ նորա եւ ասեն, Ահա
դուրք բուրաստանիս փակեալ են, եւ
չիք ոք որ տեսանէ զմեզ, եւ մեք ցան-
կացեալ եմք քեզ. վասն որոյ եւ քո
21 հաւանեալ մեզ՝ լեր ընդ մեզ։ Ապա թէ
ոչ, վկայեմք զքէն, եթէ ոմն պատանի
էր ընդ քեզ, եւ վասն այնորիկ արձա-
22 կեցեր զաղջկունսն ի քէն։ Յոգւոց ե-
հան Շուշան եւ ասէ, Տագնապ է ինձ յա-
մենայն կողմանց. եթէ զայդ գործ գոր-
ծեցից՝ մահ է ինձ, եւ եթէ ոչ գործեցից՝
23 չեմ ապրելոց ի ձեռաց ձերոց։ Բայց լաւ
է ինձ չգործել զայդ, եւ անկանել ի ձեռս
ձեր, քան թէ մեղայց առաջի Տեառն։
24 Եւ աղաղակեաց ի ձայն մեծ Շուշան.
աղաղակեցին եւ երկոքին ծերքն կից
25 նմին։ Եւ ընթացաւ մին եբաց զդուրս
26 բուրաստանին։ Իբրեւ լուան զձայն ճչոյն
ի բուրաստանի անդ ընտանիքն՝ անկան
ընդ կողմն դրանն ի ներքս, տեսանել
թէ զի՞նչ իրք ընդ նա անցեալ իցեն։
27 Եւ իբրեւ ասացին ծերքն զբանս իւր-
եանց՝ զամօթի հարան ծնողքն յոյժ,
զի ոչ երբեք այնպիսի բանք ասացան
28 զՇուշանայ։ Եւ եղեւ ի վաղիւ անդր

[1] Այս ԺԳ. գլուխ չգտանի յԵբրայականէն

իբրեւ եկն ժողովուրդն առ այրն նորա
Յովակիմ, եկին եւ երկոքին ծերքն անօ-
րէնն մտօք զՇուշանայ՝ սպանանել զնա ։
29 Եւ ասեն առաջի ժողովրդեանն, Յղե-
ցէք զՇուշանայ զդստերէ Քեղկեայ, որ
30 է կին Յովակիմայ ։ Եւ նոքա յղեցին.
եւ եկն նա, եւ ծնողք իւր եւ որդիք
31 իւր եւ ամենայն ազգականք նորա ։ Եւ
Շուշան էր փափուկ յոյժ եւ գեղեցիկ
32 տեսլեամբ ։ Եւ անօրէնքն հրամայեցին
հոլանի առնել զնա, քանզի սքօղեալ
33 էր, զի յղցին գեղով նորա ։ Եւ իւրքն
լային, եւ ամենեքին որ ճանաչէին զնա ։
34 Յարեան երկոքին ծերքն ի միջոյ ժո-
ղովրդեանն, եւ եդին զձեռս իւրեանց
35 ի վերայ գլխոյ նորա ։ Եւ նա լալով հա-
յեցաւ յերկինս, քանզի էր սիրտ նորա
36 յուսացեալ ի Տէր ։ Ասեն ծերքն երկո-
քեան, Մինչդեռ մեք միայն զգնայաք
ի մէջ բուրաստանին, եմուտ դա անդր
երկու աղջկամբք, եւ փակեաց զդուրս
բուրաստանին, եւ արձակեաց զաղջկ-
37 կունսն ։ Եկն առ նա պատանի մի որ էր
38 թաքուցեալ, եւ անկաւ ընդ նմա ։ Եւ
մեք էաք յանկեան բուրաստանին. իբ-
րեւ տեսաք զանօրէնութիւնն՝ ընթա-
ցաք առ դոսա, եւ տեսաք զխնելն դո-
39 ցա ընդ միմեանս ։ Զնա ոչ կարացաք
ունել, քանզի բուռն էր քան զմեզ, եւ
եբաց զդուրսն եւ փախեաւ արտաքս ։
40 Զդա զոր ըմբռնեցաքդ՝ հարցաք թէ ով
էր պատանին, եւ ոչ կամեցաւ պատ-
41 մել մեզ. զայդ վկայեմք ։ Եւ հաւատաց
նոցա ատեանն իբրեւ ծերոց ժողովրդեան
եւ դատաւորաց, եւ դատեցան զնա
42 մեռանել ։ Աղաղակեաց ի ձայն բարձր
Շուշան եւ ասէ, Աստուած յաւիտե-
նական ծածկագէտ, որ գիտես զամե-
43 նայն յառաջ քան զլինել նոցա. Դու
գիտես զի սուտ վկայեն զինէն. եւ ա-
հա մեռանիմ որ ոչ ինչ գործեցի՝ զոր
44 դոքայդ անօրինեն զինէն ։ Եւ լուաւ
Տէր ձայնի նորա. եւ մինչդեռ տանէին
45 զնա կորուսանել, Զարթոյց Աստուած
զՀոգին Սուրբ ի վերայ մանկան միոյ
46 տղայոյ որում անուն էր Դանիէլ ։ Եւ
աղաղակեաց ի ձայն բարձր, եւ ասէ,
47 Անպարտ եմ ես յարենէ դորա ։ Եւ դար-
ձաւ ամենայն ժողովուրդն առ նա, եւ
ասեն, Զի՞նչ է բանդ այդ զոր դուդ խօ-
48 սեցար ։ Եւ նա եկաց ի մէջ նոցա եւ
ասէ, Այդպէս անմիտք էք, որդիք Իս-
րայելի. ոչ քննեցէք եւ ոչ յիրաւանց
վերայ հասէք. եւ դատապարտեցէք
49 զդուստրդ Իսրայելի ։ Դարձայք անդրէն
յատեան. քանզի սուտ վկայեցին դոքա
50 զնմանէ ։ Եւ դարձաւ ժողովուրդն փութ-
փութալի. եւ ասեն ցնա ծերքն, Եկ նիստ
ի միջի մերում, եւ պատմեա մեզ. զի
51 քեզ ետ Աստուած զերիցութիւն ։ Եւ
ասէ ցնոսա Դանիէլ, Մեկնեցէք զդոսա
ի միմեանց ի բաց եւ քննեցուք զդո-
52 սա ։ Իբրեւ մեկնեցան ի միմեանց, կո-
չեաց զմին ի նոցանէ եւ ասէ ցնա, Ա՛յ
հնացեալ աւուրբք չարութեան, այժմ
ահա եկին հասին մեղք քո՝ զոր գոր-
53 ծէիր յառաջագոյն ։ Զի դատէիր զդա-
տաստանս անիրաւութեամբ, զանմեղս
դատապարտէիր, եւ զմեղաւորս ար-
ձակէիր. ուր Աստուծոյ ասացեալ էր՝
թէ Զանմեղն եւ զարդարն մի սպանա-
54 նիցես ։ Բայց արդ եթէ տեսեր զդոսա,
ընդ որո՞վ ծառով հասեր առ դոսա՝ մինչ
խօսէին ընդ միմեանս ։ Եւ նա ասէ, Ընդ
55 հերձեաւն ։ Ասէ Դանիէլ, Բարւոք ստե-
ցեր ի քոյին գլուխդ. ահաւասիկ հրեշ-
տակի Աստուծոյ առեալ հրաման, հերձ-
56 ցէ զքեզ ընդ մէջ ։ Եւ ի բաց մերժեաց
զնա. հրամայեաց ածել զմիւսն, եւ ա-
սէ ցնա, Զաւակ Քանանու, եւ ոչ Յու-
դայ, գեղ զորս պատրեաց զքեզ, եւ ցան-
57 կութիւն չրջեաց զսիրտ քո ։ Այդպէս
առնէիք զդստերս Իսրայելի, եւ նոքա
առ երկիւղի մերձենային առ ձեզ. այլ
եւ ոչ դուստրդ Յուդայ կալաւ յանձին
58 զանօրէնութիւնս ձեր ։ Բայց արդ ասէ
սա, ընդ որո՞վ ծառով հասեր առ դո-
սա մինչդեռ խօսէին ընդ միմեանս ։ Եւ
59 նա ասէ, Ընդ սղոցեաւն ։ Ասէ ցնա Դա-
նիէլ, Բարւոք ստեցեր եւ դու ի քոյին
գլուխ, զի կայ աւասիկ հրեշտակ Աս-
տուծոյ սուսեր մերկ ի ձեռին՝ սղոցել
զքեզ ընդ մէջ, զի սատակեսցէ զքեզ ։
60 Եւ աղաղակեաց ամենայն ժողովուրդն
ի ձայն մեծ, եւ օրհնեցին զԱստուած
61 որ ապրեցուցանէ զյուսացեալս իւր ։ Եւ
յարեան ի վերայ երկուց ծերոցն. քան-
զի յանդիմանեաց զնոսա Դանիէլ ի նո-
ցին բերանոց սուտ վկայս. եւ արարին
ընդ նոսա՝ որպէս եւ եդին չարութիւն
ի մտի առնել ընդ ընկերի, ըստ օրի-
62 նացն Մովսիսի ։ Եւ սպանին զնոսա. եւ
ապրեցաւ արիւն արդար յաւուր յայն-
63 միկ ։ Իսկ Քեղկիա եւ կին նորա օրհ-

նեցին զԱստուած վասն դստերն իւր-
եանց Շուշանայ՝ հանդերձ Յովակիմաւ
արամբ նորա, եւ ամենայն ազգակա-
նօք նորա. զի ոչ գտան իրք զարշու-
64 թեան ի նմա։ Եւ Դանիէլ եղեւ մեծ ա-
ռաջի ժողովրդեանն յօրէ յայնմանէ եւ
անդր։

## ԳԼՈՒԽ Ա

[1]Տեսիլ երկրորդ։

1 Յամին երրորդի թագաւորութեանն Յո-
վակիմայ արքայի Յուդայ, եկն Նաբու-
քոդոնոսոր արքայ Բաբելացւոց յԵրու-
2 սաղէմ, եւ պաշարեաց զնա։ Եւ ետ
Տէր ի ձեռս նորա զՅովակիմ արքայ
Յուդայ, եւ ի մասնէ սպասուց տանն Աս-
տուծոյ, եւ տարաւ զայն յերկիրն Սենաար
ի տուն աստուծոյ իւրոյ, եւ զսպասն եմոյծ
ի տուն գանձի աստուծոյ իւրոյ։
3 Եւ ասէ թագաւորն ցԱսփանէզ
ներքինապետ իւր՝ ածել յորդւոց
[1]գերութեանն Իսրայէլի եւ ի զա-
ւակէ թագաւորութեանն եւ [2]ի Պար-
4 թեւաց Մանկունս անարատս, գեղե-
ցիկս երեսօք, եւ խելամուտս ամենայն
իմաստութեան եւ հմուտս գիտութեան,
մտավարժս հանճարով եւ զօրաւորս,
կալ ի տաճարին առաջի թագաւորին.
եւ ուսուցանել նոցա զգրութիւն եւ
5 զլեզու Քաղդէացւոց։ Եւ կարգեաց նո-
ցա թագաւորն ռոճիկս օր ըստ օրէ ի
սեղանոյ արքայի, եւ ի գինւոյ զոր ինքն
ըմպէր, սնուցանել զնոսա ամս երիս,
եւ ապա կացուցանել առաջի թագաւո-
6 րին։ Եւ էին ի նոսա յորդւոցն Յուդայ՝
Դանիէլ եւ Անանիա եւ Միսայէլ եւ Ա-
7 զարիա։ Եւ եդ նոցա ներքինապետն
անուանս. Դանիելի՝ Բաղտասար, եւ
Անանիայի՝ Սեդրաք, եւ Միսայելի՝ Մի-
սաք, եւ Ազարեայ՝ Աբեդնագով։
8 Եւ եդ Դանիէլ ի մտի իւրում [3]չճա-
շակել ի սեղանոյ թագաւորին եւ ոչ ի
գինւոյ ըմպելւոյ նորա, եւ աղաչեաց
9 զներքինապետն զի մի՛ [4]ճաշակեսցէ։ Եւ
ետ Աստուած զԴանիէլ ի շնորհս եւ յո-
ղորմութիւն առաջի ներքինապետին։
10 Եւ ասէ ներքինապետն ցԴանիէլ, Եր-
կնչիմ ես ի տեառնէ իմմէ արքայէ, որ
կարգեաց ձեզ զկերակուրս ձեր եւ զըմ-
պելի. զուցէ տեսանիցէ զերեսս ձեր
տրտմագոյնս քան զայլոց մանկանց հա-
սակակցաց ձերոց, եւ առնիցէք զիս
11 գլխապարտ առ թագաւորին։ Եւ ասէ Դա-
նիէլ [5]ցԱմեղասադ, զոր կացուցեալ էր
ներքինապետն ի վերայ Դանիէլի եւ Ա-
12 նանեայ եւ Միսայէլի եւ Ազարեայ, Ա-
ղէ, փորձեա զծառայս քո աւուրս տասն,
եւ տացեն մեզ ունդս, եւ կերիցուք,
13 եւ ջուր արբցուք. Եւ երեւեսցին ա-
ռաջի քո [6]գոյնք մեր, եւ [6]գոյն ման-
կանցդ՝ որ ուտեն զսեղան թագաւորին.
եւ որպէս տեսանիցես՝ արասջիր ընդ
14 ծառայս քո։ Եւ անսաց նոցա, եւ փոր-
15 ձեաց զնոսա աւուրս տասն։ Եւ յետ
կատարելոյ աւուրցն տասանց, երեւե-
ցան երեսք նոցա նմա բարիք, եւ [7]հզօրք
մարմնով քան զամենայն մանկունսն որ
16 ուտէին զսեղան թագաւորին։ Եւ առ-
նոյր [8]Ամեղասադ զընթրիս նոցա եւ զգի-
նի ըմպելւոյ նոցա, եւ տայր ունդս
[9]չորեցունց մանկանցն։
17 Եւ ետ նոցա Աստուած իմաստու-
թիւն եւ հանճար յամենայն գրութեան
եւ իմաստութեան. եւ Դանիէլ խելա-
մուտ էր ամենայն տեսլեան եւ երա-
18 զոց։ Եւ յետ կատարածի աւուրցն հրա-
մանն ետ թագաւորն ածել զնոսա, եւ
ած զնոսա ներքինապետն առաջի Նա-
19 բուքոդոնոսորայ։ Եւ խօսեցաւ ընդ նո-
սա արքայն, եւ ոչ գտան յամենայնի
նման Դանիէլի եւ Անանեայ եւ Միսա-
յէլի եւ Ազարեայ. եւ կային առաջի
20 թագաւորին։ Եւ յամենայն բանս իմաս-
տութեան եւ գիտութեան զոր խնդրէր
ի նոցանէ թագաւորն՝ գտանէր զնոսա
տասնապատիկ առաւել քան զամենայն
գէտս եւ զմոգս որ էին ի թագաւորու-
21 թեան նորա։ Եւ եղեւ Դանիէլ մինչեւ
[10]յամս Կիւրոսի արքայի։

## ԳԼ. Բ

[1]Տեսիլ երրորդ։

1 Յամին երկրորդի թագաւորութեան իւ-
րոյ, ետես երազ Նաբուքոդոնոսոր, եւ
յիմարեցաւ ոգի նորա, եւ քուն հատաւ
2 ի նմանէ։ Եւ ասէ թագաւորն, Կոչե-

[1]Եբր. [illegible] [2]Եբր. յիշխանաց [3]Եբր. չպղծել զանձն [4]Եբր. պղծեսցէ զանձն նորա

[5]Ըստ Յունարէն զԱմեղասար, այսինքն՝ զվերակացուն [6]Եբր. երեսք [7]Եբր. գէրք [8]Ըստ Յունարէն Ամեղասար [9]Եբր. նոցա։ (17) Եւ մանկանցս այսոցիկ չորեցունց ետ [10]Եբր. յամն առաջին

ցէք զգէտս եւ զմոգս եւ զկախարդս եւ
զքաղդեայս՝ պատմել թագաւորին զե-
րազ իւր․ եւ եկին կացին առաջի թա-
գաւորին ։
3 Եւ ասէ ցնոսա թագաւորն, Երազ
տեսի, եւ յիմարեցաւ ոգի իմ խելա-
4 մուտ լինել երազոյն ։ Եւ խօսեցան քաղ-
դեայքն ընդ թագաւորին [1]Ասորերէն․
Արքայ, յաւիտեան կեաց․ ասա դու զե-
րազն ծառայից քոց, եւ զմեկնութիւն
5 նորա ասասցուք ։ Պատասխանի ետ ար-
քայն եւ ասէ ցքաղդեայսն․ Բանն մե-
րացաւ յինէն․ արդ եթէ ոչ ցուցանի-
ցէք ինձ զերազն եւ զմեկնութիւն նո-
րա՝ ի կորուստ լինիցիք, եւ տունք ձեր
6 [2]յաւար լինիցին ։ Ապա թէ զերազն եւ
զմեկնութիւն նորա ցուցանիցէք ինձ,
պարգեւս եւ տուրս բազումս եւ պա-
տիւս առնուցուք յինէն․ բայց միայն
զերազն եւ զմեկնութիւն նորա պատ-
7 մեցէք ինձ ։ Պատասխանի ետուն կրկին
անգամ, եւ ասեն, Ասասցէ արքայ զե-
րազն ծառայից իւրոց, եւ զմեկնութիւն
8 նորա պատմեսցուք ։ Պատասխանի ետ
արքայ եւ ասէ, Ճշմարտիւ գիտեմ ե-
թէ ժամավաճառ լինիք, զի տեսէք թէ
9 բանն վերացաւ յինէն ։ Արդ եթէ զե-
րազն ոչ պատմիցէք ինձ, [3]գիտեմ զի
բան սուտ եւ զեղծուցանելի միաբա-
նեալ էք ասել առաջի իմ մինչեւ ժա-
մանակն անցցէ․ ասացէք ինձ զերազն
իմ, եւ գիտացից եթէ եւ զմեկնութիւն
10 նորա պատմելոց էք ինձ ։ Պատասխանի
ետուն միւսանգամ քաղդեայքն առաջի
թագաւորին եւ ասեն, Ոչ գոյ մարդ ի
վերայ երկրի՝ որ զբան թագաւորին կա-
րող է ցուցանել․ զի ամենայն թագա-
ւոր մեծ եւ իշխան՝ բան զայդպիսի ոչ
հարցանէ ցգէտ եւ ցմոգ եւ ցքաղդեայ․
11 Զի բանն զոր արքայ հարցանէ՝ ծանր
է, եւ այլ ոք չիք որ պատմիցէ զայդ
առաջի արքայի, բայց եթէ դիքն որոց
ոչ է բնակութիւն ի մէջ [4]ամենայն մսե-
ղեաց ։
12 Յայնժամ թագաւորն բարկութեամբ
եւ սրտմտութեամբ բազմաւ ասաց կո-
տորել զամենայն իմաստունս Բաբելաց-
13 ւոց ։ Եւ հրամանն ել, եւ իմաստունքն
կոտորէին․ եւ խնդրէին զԴանիէլ եւ
14 զբարեկամս նորա սպանանել ։ Յայնժամ
Դանիէլ խօսեցաւ խորհուրդ եւ խրատ
ընդ Արիովքայ դահճապետի արքային
որ ելեալ էր կոտորել զիմաստունս [5]Բա-
15 բելացւոց, իշխան թագաւորին․ Եհարց
զնա եւ ասէ", Վասն է՞ր ել հրամանդ
այդ [6]խիստ յերեսաց արքայի․ եւ յայտ-
16 նեաց զբանն Արիովք Դանիելի ։ Եւ Դա-
նիէլ եմուտ եւ աղաչեաց զարքայն, զի
տացէ նմա ժամ, եւ զմեկնութիւն նո-
17 րա պատմեսցէ թագաւորին ։ Եւ եմուտ
Դանիէլ ի տուն իւր, եւ Անանեայ եւ
Ազարեայ եւ Միսայելի բարեկամաց իւ-
18 րոց եցոյց զբանն ։ Եւ խնդրէին զթու-
թիւն յԱստուծոյ երկնից[7], զի մի կո-
րիցէ Դանիէլ եւ բարեկամք իւր ընդ
այլ իմաստունս Բաբելացւոց ։
19 Յայնժամ Դանիելի ի տեսլեան գիշե-
րոյ յայտնեցաւ խորհուրդն․ եւ օրհնեաց
20 զԱստուած երկնից Դանիէլ․ Եւ ասէ, Ե-
ղիցի անուն Տեառն օրհնեալ յաւիտե-
նից մինչեւ յաւիտեանս․ զի իմաստու-
թիւն [4]եւ հանճար" եւ զօրութիւն՝ նո-
21 րա է․ Եւ նա փոփոխէ զժամանակս եւ
զժամս, կացուցանէ զթագաւորս եւ փո-
փոխէ, տայ իմաստութիւն իմաստնոց
22 եւ խորհուրդ խորհրդականաց․ Ինքն
յայտնէ զխորինս եւ զգաղտնիս, գիտէ
որ կայ ի խաւարի եւ լոյս ընդ նմա ։
23 Զքեզ, Աստուած հարցն մերոց, գոհանամ
եւ օրհնեմ, զի իմաստութիւն եւ զօ-
րութիւն ետուր ինձ, եւ ծանուցեր ինձ
որ ինչ աղօթիւք խնդրեցաք մեք ի քէն,
եւ զբանն թագաւորին ցուցեր [8]ինձ ։
24 Եւ եմուտ Դանիէլ առ Արիովք զոր
կացուցեալ էր թագաւորին կորուսանել
զիմաստունս Բաբելացւոց, եւ ասէ ցնա,
Զիմաստունս Բաբելացւոց մի կոտորեր․
բայց զիս տար առաջի թագաւորին, եւ
ես պատմեցից զմեկնութիւնն թագաւո-
25 րին ։ Յայնժամ Արիովք փութապէս տա-
րաւ զԴանիէլ առաջի թագաւորին, եւ
ասէ ցնա, Գտի այր մի յորդւոց գերու-
թեանն Հրէաստանի, որ զմեկնութիւնն
26 պատմեսցէ արքայի ։ Պատասխանի ետ
թագաւորն եւ ասէ ցԴանիէլ՝ որում անուն
էր Բաղտասար, եթէ [4]կարո՞ղ իցես պատ-
մել ինձ զերազն զոր տեսի, եւ զմեկ-
նութիւն նորա ։

[1] Կամ, Արամերէն [2] Արամերէն, յաղբեւս [3] Արամ. մի վճիռ է զձէնջ. գիտեմ [4] Արամ. պոյոռէ

[5] Արամ. Բաբելացւոց. (15) Պատասխանի ետ եւ ասէ ցԱրիովք, ցիշխան թագաւորին [6] Արամ. սրագ [7] Արամերէն յառելու, վասն գաղտնեացն այնոցիկ [8] Արամ. մեզ

27 Պատասխանի ետ Դանիէլ առաջի թա-
գաւորին եւ ասէ, Զխորհուրդդ զայդ
զոր արքայ հարցանէ, ոչ է իմաստնոց
եւ մոգուց եւ գիտաց եւ բժշկաց պատ-
28 մել առաջի արքայի. Այլ գոյ Աստուած
յերկինս որ յայտնէ զխորհուրդս, եւ
եցոյց Նաբուքոդոնոսորայ արքայի որ ինչ
լինելոց է յաւուրս յետինս։ Երազն եւ
տեսիլ գլխոյ քո յանկողնի քում, այս
29 է. Արքայ, խորհուրդք քո մտայոյզ առ-
նէին զքեզ յանկողնի քում, թէ զի՞նչ
լինելոց է յետ այսորիկ. եւ յայտնիչն
խորհրդոց եցոյց քեզ զինչ լինելոց է։
30 Եւ ինձ ոչ առ իմաստութեան ինչ որ
իցէ յիս քան յամենայն կենդանիս յայտ-
նեցաւ խորհուրդն, այլ վասն ցուցա-
նելոյ արքայի զմեկնութիւնն, զի ծա-
նիցես զխորհուրդս սրտի քո։
31 Դու, արքայ, տեսանէիր, եւ ահա
պատկեր մի, մեծ պատկեր, եւ երեսք
նորա եւ տեսիլ նորա ահագին յոյժ, եւ
կայր առաջի քո. ահաւոր էր յոյժ պատ-
32 կերն։ Որոյ գլուխն յոսկւոյ սրբոյ, [1]ձեռքն
եւ" լանջքն եւ բազուկք իւր արծա-
թիք, մէջք նորա եւ բարձք պղնձիք,
33 Եւ սրունքն երկաթիք, եւ ոտքն՝ կէսն
34 յերկաթոյ եւ կէսն ի խեցւոյ։ Հայէիր
մինչեւ հատաւ վէմ առանց ձեռին, եւ
եհար զպատկերն ի վերայ երկաթեղէն
եւ խեցեղէն ոտիցն, եւ մանրեաց զնո-
35 սա ի սպառ։ Յայնժամ առ հասարակ
մանրեցան խեցին եւ երկաթ, պղինձն
եւ արծաթ եւ ոսկին, եւ եղեն իբրեւ
զփոշի կալոյ ամարայնոյ. եւ առ զնոսա
սաստկութիւն հողմոյ, եւ տեղի ոչ
գտանէր նոցա. եւ վէմն որ եհար զպատ-
կերն՝ եղեւ լեառն մեծ, եւ ելից զա-
36 մենայն երկիր։ Այս է երազն, եւ զմեկ-
նութիւն նորա ասասցուք առաջի ար-
քայի։
37 Դու ես, արքայ, արքայից արքայ,
որում Աստուած երկնից թագաւորու-
38 թիւն [2]հզօր եւ պատուական" ետ. Եւ
ընդ ամենայն տեղիս ուր բնակեալ են
որդիք մարդկան, զգազանս վայրի եւ
զթռչունս երկնից [1]եւ զձկունս ծովու"
ետ ի ձեռս քո, եւ կացոյց զքեզ տէր
39 ամենայնի. դու ես գլուխն ոսկի։ Եւ
զկնի քո յարիցէ այլ թագաւորութիւն
խոնարհագոյն քան զքեզ. եւ թագաւո-
րութիւնն երրորդ, որ է պղինձն, տի-
40 րեսցէ ամենայն երկրի։ Եւ թագաւո-
րութիւնն չորրորդ, հզօր իբրեւ զերկաթ,
զոր օրինակ երկաթ մանրէ եւ մաշէ զա-
մենայն, նոյնպէս մանրեսցէ եւ մաշե-
41 ցէ զամենայն։ Եւ զի տեսանէիր զոտն
եւ զմատունսն, կէս կողմն յերկաթոյ,
եւ կէս կողմն ի խեցւոյ, թագաւո-
րութիւնն բաժանեալ լիցի, եւ [3]յար-
մատոյ երկաթոյն եղիցի ի նմա, զոր
օրինակ տեսանէիր զերկաթն ընդ խեցին
42 խառնեալ։ Եւ մատունք ոտիցն՝ կողմն
մի յերկաթոյ, եւ կողմն մի ի խեցւոյ, մի
կողմն թագաւորութեանն հզօր կայցէ,
43 եւ ի նմանէ եղիցի ջախջախեալ. Զի տե-
սանէիր զերկաթն ընդ խեցին խառնեալ,
եղիցին խառն ի զաւակէ մարդկան, եւ
ի միմեանս ոչ յարիցեն, զոր օրինակ ոչ
խառնի երկաթ ընդ խեցի։
44 Եւ յաւուրս թագաւորացն այնոցիկ
յարուսցէ Աստուած երկնից թագաւորու-
թիւն որ յաւիտեանս ոչ եղծանիցի, եւ
թագաւորութիւն նորա ազգի այլում ոչ
մնասցէ. մանրեսցէ եւ հոսեսցէ զամենայն
թագաւորութիւնս, եւ ինքն կացցէ յա-
45 ւիտեանս։ Որպէս տեսանէիր՝ զի ի լեռ-
նէն հատաւ վէմն առանց ձեռին, եւ
մանրեաց զխեցին եւ զերկաթ, զպղինձն
եւ զարծաթ եւ զոսկի, Աստուած մեծ
եցոյց արքայի որ ինչ լինելոց է առ յա-
սպա, եւ ճշմարիտ է երազն, եւ հաւա-
տարիմ մեկնութիւն նորա։
46 Յայնժամ արքայն Նաբուքոդոնոսոր
անկաւ ի վերայ երեսաց իւրոց, եւ եր-
կիր եպագ Դանիելի, եւ զոհս եւ խունկս
անուշութեան հրամայեաց մատուցանել
47 նմա։ Պատասխանի ետ թագաւորն եւ
ասէ ցԴանիէլ, Արդարեւ Աստուածն
ձեր՝ նա է Աստուած աստուծոց եւ Տէր
[1]տերանց եւ Թագաւոր" թագաւորաց,
որ յայտնէ զխորհուրդս, զի յայտնել
48 կարացեր զխորհուրդդ զայդ։ Եւ մեծա-
ցոյց թագաւորն զԴանիէլ, եւ պարգեւս
մեծամեծս եւ բազումս ետ նմա. եւ
կացոյց զնա ի վերայ աշխարհին Բաբե-
լացւոց, եւ իշխան նախարարաց ի վե-
րայ ամենայն իմաստնոցն Բաբելացւոց։
49 Եւ Դանիէլ խնդրեաց յարքայէ, եւ կա-
ցոյց ի վերայ գործոց աշխարհին Բաբե-
լացւոց՝ զՍեդրաք, զՄիսաք եւ զԱբեդ-
նագով. եւ Դանիէլ էր ի դրան արքային։

---

[1] 3Աբոմ. պղնձէ [2] Աբոմ. եւ զօրութիւն եւ իշխանութիւն եւ փառս

[3] Աբոմ. ի պնդութենէ

## ԳԼ. Գ

[1]Տեսիլ չորրորդ։"

1 [2]Յամին ութուտասներորդի Նաբուքո-
դոնոսորայ արքայի" արար պատկեր ոսկի,
բարձրութիւն նորա վաթսուն կանգուն,
եւ լայնութիւն նորա կանգուն վեց. եւ
կանգնեաց զնա ի դաշտին Դէերայ յաշ-
2 խարհին Բաբելացւոց։ Եւ արձակեաց
ժողովել զկուսակալս եւ զզօրավարս եւ
զզօրագլուխս եւ զպետս եւ [3]զբռնաւորս
եւ զգործակալս" եւ զամենայն իշխանս աշ-
խարհաց՝ գալ ի նաւակատիս պատկերին
զոր կանգնեաց արքայն Նաբուքոդոնո-
3 սոր։ Եւ ժողովեցան կուսակալք, զօրա-
վարք եւ զօրագլուխք, պետք եւ [4]բռնա-
ւորք, մեծամեծք, գործակալք" եւ ամե-
նայն իշխանք աշխարհաց, գալ ի նաւա-
կատիս պատկերին զոր կանգնեաց արքայն
Նաբուքոդոնոսոր. եւ կային առաջի
պատկերին զոր կանգնեաց արքայն Նա-
բուքոդոնոսոր։
4 Եւ քարոզ կարդայր զօրութեամբ եւ
ասէր, Ձեզ ասի, ազգք եւ ազինք եւ
5 լեզուք. Յորժամ լսիցէք զձայն փողոյ,
սրնգի, թմբկի եւ քնարի եւ տաւղի եւ
զերգոց միաբանութեան, եւ զամենայն
ազգաց արուեստականաց, անկանիջիք
եւ երկիր պագանիջիք պատկերին[5] զոր
6 կանգնեաց Նաբուքոդոնոսոր արքայ։ Եւ
որ ոչ անկեալ երկիր պագանիցէ՝ ի նմին
ժամու ընկեսցի ի հնոցն հրոյն բորբո-
7 քելոյ։ Եւ եղեւ իբրեւ լուան ազգքն
զձայն փողոյն՝ զսրնգին, զտաւղի եւ
զնուագարանաց, եւ զամենայն ազգաց
արուեստականաց, անկանէին ամենայն
ազգքն եւ ազինք եւ լեզուք, եւ եր-
կիր պագանէին պատկերին ոսկւոյ զոր
կանգնեաց արքայն Նաբուքոդոնոսոր։
8 Յայնժամ մատեան արք Քաղդէացիք
եւ եղեն չարախօս զՀրէից առ Նաբու-
9 քոդոնոսորայ. Եւ ասեն, Արքայ, յա-
10 ւիտեան կեաց. Դու հրաման ետուր ա-
մենայն մարդոյ որ լսիցէ զձայն փողոյ,
զսրնգի եւ զքնարի եւ զտաւղի եւ
զնուագարանաց, եւ զամենայն ազգաց
11 արուեստականաց[6]. Եւ որ ոչ անկեալ եր-
կիր պագանիցէ պատկերին ոսկւոյ,
12 անկցի ի հնոց հրոյն բորբոքելոյ։ Արդ են
աստ արք Հրեայք, զորս կացուցեր ի վե-
րայ գործոց աշխարհիս Բաբելացւոց,
Սեդրաք, Միսաք եւ Աբեդնագով, որ
ոչ հնազանդեցան հրամանի քում, ար-
քայ, եւ զդիս քո ոչ պաշտեն, եւ պատ-
կերիդ ոսկւոյ զոր կանգնեցեր՝ երկիր ոչ
պագանեն։
13 Յայնժամ Նաբուքոդոնոսոր սրտմտու-
թեամբ եւ բարկութեամբ հրամայեաց
ածել զՍեդրաք, զՄիսաք եւ զԱբեդնա-
14 գով. եւ ածին առաջի թագաւորին։ Պա-
տասխանի ետ Նաբուքոդոնոսոր եւ ասէ
ցնոսա, Թէ արդարեւ՞, Սեդրաք, Մի-
սաք եւ Աբեդնագով, զդիս իմ ոչ պաշ-
տիցէք, եւ պատկերին ոսկւոյ զոր կանգ-
15 նեցի երկիր ոչ պագանիցէք։ Բայց արդ
եթէ պատրաստ լինիցիք, զի յորժամ
լսիցէք զձայն փողոյ, սրնգի եւ թմբկի
եւ քնարի, եւ զմիաբանութիւն ամե-
նայն ազգաց արուեստականաց, անկա-
նիցիք եւ երկիր պագանիցէք պատկե-
րին զոր արարի. ապա թէ ոչ պագա-
նիցէք երկիր, ի նմին ժամու անկանի-
ցիք ի հնոց հրոյն բորբոքելոյ. եւ ո՞վ է
Աստուած որ փրկէ զձեզ ի ձեռաց իմոց։
16 Պատասխանի ետուն Սեդրաք, Մի-
սաք եւ Աբեդնագով, եւ ասեն ցարքայ
Նաբուքոդոնոսոր, Ոչ ինչ է պիտոյ վասն
բանիդ այդորիկ տալ քեզ պատասխանի.
17 [7]Զի է մեր Աստուած յերկինս" զոր մեքն
պաշտեմք, կարող է փրկել զմեզ ի հնոցէ
հրոյդ բորբոքելոյ, եւ ի ձեռաց քոց, ար-
18 քայ, ապրեցուցանել զմեզ։ Ապա թէ
ոչ, այս ինչ յայտնի լիցի քեզ, արքայ,
զի զդիս քո մեք ոչ պաշտեմք, եւ պատ-
կերիդ ոսկւոյ զոր կանգնեցեր՝ երկիր ոչ
պագանեմք։
19 Յայնժամ Նաբուքոդոնոսոր լի եղեւ
սրտմտութեամբ, եւ գոյն երեսաց նորա
շրջեցաւ ի վերայ Սեդրաքայ, Միսաքայ
եւ Աբեդնագովայ, եւ ասէ, [8]Ջեռուցէք
զհնոցն եւթնպատիկ, զի մինչեւ ի վախ-
20 ճան այրեսցին։ Եւ արք հզօրք, զօրաւորք
զօրութեամբ, կապեսցեն" զՍեդրաք,

[2]ՅԱրտմ. պակասէ [2]Արտմ. Նաբուքոդոնոսոր արքայ [3]Արտմ. զգանձապետս, եւ զխորհրդականս եւ զօրէնսգէտս [4]Արտմ. գանձապետք, խորհրդականք եւ օրէնսգէտք
[5]Արտմբերենն յաւելու, ոսկւոյ

[6]Արտմբերենն յաւելու, անկցի և երկիր պագանիցէ պատկերին ոսկւոյ [7]Արտմ. Ահա Աստուած
[8]Արտմ. ջեռուցանել զհնոցն եւթնպատիկ առաւել քան զոր սովոր էին ջեռուցանել՝ (20) Եւ արանց զօրաւորաց որ ի զօրս իւր՝ հրաման ետ կապել

զՄիսաք եւ զԱբեդնագով՝ արկանել ի հնոց
21 հրոյն բորբոքելոյ։ Յայնժամ արքն այ-
նոքիկ կապեցան պատմուճանօք եւ վար-
տեօք, արտախուրակօք եւ զանկապա-
նօք իւրեանց, եւ ընկեցան ի մէջ հնոցի
22 հրոյն բորբոքելոյ։ Զի հրաման թագա-
ւորին սաստկանայր, եւ հնոցն բորբոքէր
23 [1]եւթնպատիկ առաւել յոյժ"։ Եւ երեքեան
նոքա՝ Սեդրաք, Միսաք եւ Աբեդնա-
գով, անկան ի մէջ [2]հնոցին կապեալք։
24 [3]Գնային ի մէջ հրոյն, օրհնէին
25 եւ գովէին զՏէր Աստուած։ Յարեաւ
Ազարիա եւ կաց յաղօթս այսպէս. ե-
բաց զբերան իւր ի մէջ հրոյն եւ ասէ,
26 Օրհնեալ ես Տէր Աստուած հարցն մե-
րոց. գովեալ եւ փառաւորեալ է անուն
27 քո յաւիտեանս. Զի արդար ես յամե-
նայնի զոր ածեր ի վերայ մեր, եւ ա-
մենայն գործք քո ճշմարիտ են. եւ ու-
ղիղ են ճանապարհք քո, եւ ամենայն
28 դատաստանք քո ճշմարտութիւն։ Եւ ի-
րաւունս ճշմարտութեան արարեր ըստ
ամենայնի, զոր արարեր մեզ եւ քաղա-
քին սրբոյ հարցն մերոց Երուսաղեմի։
29 Զի ճշմարտութեամբ եւ յիրաւի ածեր
զայս ամենայն վասն մեղաց մերոց. զի
մեղաք եւ անօրինեցաք յապստամբ լի-
նելն ի քէն, եւ առաւել մեղաք յամե-
30 նայնի։ Եւ պատուիրանաց քոց ոչ ան-
սացաք. ոչ պահեցաք եւ ոչ արարաք
որպէս պատուիրեցեր մեզ՝ զի բարի լի-
31 նիցի մեզ։ Եւ զամենայն զոր ածեր ի
վերայ մեր եւ զամենայն զոր արարեր
32 մեզ՝ արդար դատաստանաւ արարեր։ Եւ
մատնեցեր զմեզ ի ձեռս թշնամեաց մե-
րոց՝ անօրինաց, խստաց եւ ապստամ-
բողաց, եւ թագաւորի անիրաւի եւ չարի
33 քան զամենայն երկիր։ Եւ արդ ոչ դոյ
մեզ բանալ զբերանս մեր, զի ամօթ եւ
նախատինք եղաք ծառայից քոց պաշ-
34 տօնէից։ Այլ մի՛ մատներ զմեզ ի սպառ
վասն անուան քո, եւ մի՛ ցրեր զուխտ
քո, եւ մի՛ ի բացէ առներ զողորմու-
35 թիւնս քո ի մէնջ։ Վասն Աբրահամու
սիրելւոյ քո եւ վասն Իսահակայ ծա-
ռայի քո եւ վասն Իսրայելի սրբոյ քո,
36 Որոց խօսեցար բազմացուցանել զզա-
ւակ նոցա իբրեւ զաստեղս երկնից, եւ
37 իբրեւ զաւազ առ ափն ծովու։ Եւ արդ,
Տէր, նուազեցաք քան զամենայն ազգս,
եւ եմք տառապեալք յամենայն երկրի
38 այսօր վասն մեղաց մերոց։ Եւ ոչ գոյ
ի ժամանակի յայսմիկ իշխան, մարգարէ
եւ առաջնորդ, ոչ ողջակէզք եւ ոչ զոհք
եւ ոչ պատարագք եւ ոչ խունկք, եւ
ոչ տեղի տալոյ երախայրիս առաջի քո,
39 եւ գտանել զողորմութիւն։ Այլ ան-
ձամբք բեկելովք եւ հոգւովք տառա-
40 պանաց ընդունելի լիցուք՝ Իբրեւ զող-
ջակէզս խոյոց եւ զուարակաց եւ իբ-
րեւ զբիւրաւորս գառանց պարարտաց,
այնպէս եղիցի պատարագս մեր այսօր
առաջի քո՝ լինել կատարեալ զկնի քո,
41 զի չիք ամօթ յուսացելոցս ի քեզ։ Եւ
արդ գամք զհետ քո ամենայն սրտիւք
մերովք, եւ երկնչիմք մեք ի քէն, եւ
42 խնդրեմք զերեսս քո։ Մի՛ յամօթ առ-
ներ զմեզ, այլ արա ընդ մեզ ըստ հե-
զութեան քում եւ ըստ բազում ողոր-
43 մութեան քում։ Եւ փրկեա զմեզ վասն
սքանչելեաց քոց, եւ տուր փառս ա-
44 նուան քում, Տէր։ Եւ յամօթ լիցին ա-
մենեքեան որք ցուցանեն չարիս ծառա-
յից քոց, եւ ամաչեսցեն յամենայն բռնու-
թեան իւրեանց, եւ զօրութիւն նոցա
45 խորտակեսցի։ Եւ ծանիցեն զի դու ես
Տէր Աստուած միայն, եւ փառաւորեալ
ի վերայ ամենայն տիեզերաց։
46 Եւ ոչ դադարէին, որք արկին զնոսա, սպա-
սաւորք թագաւորին՝ ի բորբոքելոյ զհնոցն
նաւթիւ եւ ձիթով եւ վշով եւ որթով։
47 Եւ ելանէր դիզանայր բոցն ի վերոյ քան
48 զհնոցն ի քառասուն եւ յինն կանգուն. Եւ
շրջէր պատէր շուրջ զհնոցաւն, եւ այրէր
զորս գտանէր ի Քաղդէացւոց անտի։
49 Եւ հրեշտակ Աստուծոյ էջ եկաց ընդ
Ազարիանս ի հնոցի անդ, եւ թօթափեաց
50 զբոց հրոյն ի հնոցէ անտի։ Եւ արար ի
մէջ հնոցին իբրեւ զհողմ որ ցօղաբեր
շնչիցէ. եւ ոչ մերձենայր ամենեւին
հուրն ի նոսա, ոչ տրտմեցուցանէր եւ
51 ոչ նեղէր զնոսա։ Յայնժամ երեքեան
իբրեւ ի միոջէ բերանոյ օրհնէին եւ գո-
վէին եւ փառաւոր առնէին զԱստուած
ի մէջ հնոցին, եւ ասէին,
52 Օրհնեալ ես դու Տէր Աստուած հարցն
մերոց, գովեալ եւ առաւել բարձրացեալ
յաւիտեանս. եւ օրհնեալ է անուն սուրբ
փառաց քոց, գովեալ եւ առաւել բարձ-
53 րացեալ յաւիտեան։ Օրհնեալ ես ի տա-

[1] Աւրմ. յոյժ. զարմն զայնոսիկ որոց բարձեալ էր զՍեդրաք, զՄիսաք եւ զԱբեդնագով՝ սպան բոց հրոյն [2] Աւրմ. հնոցի հրոյն բորբոքելոյ
[3] Աստէ մինչեւ ի համարն 90 պակասի ի բնագրէն։

ճարի փառաց սրբութեան քո, գովեալ
եւ առաւել բարձրացեալ յաւիտեան։
54 Օրհնեալ ես ի վերայ աթոռոյ արքայու-
թեան քո, գովեալ եւ առաւել բարձ-
55 րացեալ յաւիտեան։ Օրհնեալ ես որ հա-
յիս յանդունդս, եւ նստիս ի քերովբէս,
գովեալ եւ առաւել բարձրացեալ յաւի-
56 տեան։ Օրհնեալ ես որ նստիս ի հաս-
տատութեան երկնից, գովեալ եւ ա-
57 ռաւել բարձրացեալ յաւիտեան։ Օրհ-
նեցէք, ամենայն գործք Տեառն, զՏէր,
օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յա-
58 ւիտեան։ Օրհնեցէք, երկինք, զՏէր, օրհ-
նեցէք եւ բարձր արարէք զնա յա-
59 ւիտեան։ Օրհնեցէք, հրեշտակք Տեառն,
զՏէր, օրհնեցէք եւ բարձր արարէք զնա
60 յաւիտեան։ Օրհնեցէք, ջուրք ամենայն
որ ի վերոյ քան զերկինս, զՏէր, օրհ-
նեցէք եւ բարձր արարէք զնա յաւի-
61 տեան։ Օրհնեցէք, ամենայն զօրութիւնք
Տեառն, զՏէր, օրհնեցէք եւ բարձր ա-
62 րարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք, արեւ
եւ լուսին, զՏէր, օրհնեցէք եւ բարձր
63 արարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք, ա-
մենայն աստեղք երկնից, զՏէր, օրհ-
նեցէք եւ բարձր արարէք զնա յաւի-
64 տեան։ Օրհնեցէք, ամենայն անձրեւք եւ
ցօղք, զՏէր, օրհնեցէք եւ բարձր արա-
65 րէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք, ամե-
նայն հողմք, զՏէր, օրհնեցէք եւ բարձր
66 արարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք, հուր
եւ տապ, զՏէր, օրհնեցէք եւ բարձր ա-
67 րարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք, ցուրտ
եւ սառն, զՏէր, օրհնեցէք եւ բարձր
68 արարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք, ե-
ղեամն եւ ձիւն, զՏէր, օրհնեցէք եւ
69 բարձր արարէք զնա յաւիտեան։ Օրհ-
նեցէք, տիւք եւ գիշերք, զՏէր, օրհնե-
ցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան։
70 Օրհնեցէք, լոյս եւ խաւար, զՏէր, օրհ-
նեցէք եւ բարձր արարէք զնա յաւի-
71 տեան, Օրհնեցէք, ամպք եւ փայլատա-
կունք, զՏէր, օրհնեցէք եւ բարձր ա-
72 րարէք զնա յաւիտեան։ Օրհնեսցէ եր-
կիր զՏէր, օրհնեսցէ եւ բարձր արաս-
73 ցէ զնա յաւիտեան։ Օրհնեցէք, լերինք
եւ բարձունք, զՏէր, օրհնեցէք եւ բարձր
74 արարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք, ա-
մենայն բոյսք երկրի, զՏէր, օրհնեցէք
75 եւ բարձր արարէք զնա յաւիտեան։ Օրհ-
նեցէք, աղբերք, զՏէր, օրհնեցէք եւ
76 բարձր արարէք զնա յաւիտեան։ Օրհ-
նեցէք, ծով եւ գետք, զՏէր, օրհնեցէք
77 եւ բարձր արարէք զնա յաւիտեան։ Օրհ-
նեցէք, կէտք եւ ամենայն կայտառք որ
ի ջուրս, զՏէր, օրհնեցէք եւ բարձր ա-
78 րարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք, թռ-
չունք երկնից, զՏէր, օրհնեցէք եւ բարձր
79 արարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք, ա-
մենայն գազանք եւ անասունք, զՏէր,
օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յա-
80 ւիտեան։ Օրհնեցէք, որդիք մարդկան,
զՏէր, օրհնեցէք եւ բարձր արարէք զնա
81 յաւիտեան։ Օրհնեսցէ Իսրայէլ զՏէր,
օրհնեսցէ եւ բարձր արասցէ զնա յա-
82 ւիտեան։ Օրհնեցէք, քահանայք, զՏէր,
օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յա-
83 ւիտեան։ Օրհնեցէք, ծառայք Տեառն,
զՏէր, օրհնեցէք եւ բարձր արարէք զնա
84 յաւիտեան։ Օրհնեցէք, հոգիք եւ շունչք
արդարոց, զՏէր, օրհնեցէք եւ բարձր
85 արարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք,
սուրբք եւ խոնարհք սրտիւք, զՏէր, օրհ-
նեցէք եւ բարձր արարէք զնա յաւի-
86 տեան։ Օրհնեցէք, Անանիա, Ազարիա եւ
Միսայէլ, զՏէր, օրհնեցէք եւ բարձր ա-
87 րարէք զնա յաւիտեան. Զի փրկեաց
զմեզ ի դժոխոց, եւ ի ձեռաց մահու ապ-
88 րեցոյց զմեզ. Եւ փրկեաց զմեզ ի հնոցէս,
եւ ի միջոյ բորբոքեալ բոցոյս, եւ ի միջոյ
89 հրոյս փրկեաց զմեզ։ Գոհացարուք
զՏեառնէ, զի քաղցր է, զի յաւիտեան
90 է ողորմ նորա։ Օրհնեցէք, ամենայն
պաշտօնեայք Տեառն, զԱստուածն աս-
տուծոց, օրհնեցէք եւ գոհացարուք, զի
յաւիտեան է ողորմ նորա։"
91 [1]Եւ Նաբուքոդոնոսոր իբրեւ լուաւ
զօրհնութիւնս նոցա" զարմացաւ. յա-
րեաւ տագնապաւ եւ ասէ ցմեծամեծս
իւր, Ո՞չ արս երիս կապեալս արկաք ի
մէջ հրոյն. եւ ասեն ցթագաւորն, Այո,
92 [2]արդար ասես," արքայ։ Եւ ասէ թա-
գաւորն, Այլ ես տեսանեմ արս չորս ար-
ձակս, եւ գնան ի մէջ հրոյն, եւ ապա-
կանութիւն ինչ ոչ գոյ ի նոսա. եւ տե-
սիլ չորրորդին նման է որդւոյ [3]Աստու-
93 ծոյ։ Յայնժամ մատեաւ Նաբուքոդոնո-
սոր ի դուռն հնոցին հրոյն բորբոքելոյ,
եւ ասէ, Սեդրաք, Միսաք եւ Աբեդ-
նագով, ծառայք Աստուծոյ բարձրելոյ,
ելէք եւ եկայք։ Եւ ելին Սեդրաք, Մի-
94 սաք եւ Աբեդնագով ի միջոյ հրոյն։ Եւ

[1]Արամ, Յայնժամ Նաբուքոդոնոսոր արքայ
[2]ՅԱրամ. պակաս [3]Արամ, աստուածոց

ժողովեցան նախարարքն եւ կուսակալք
եւ զօրավարքն եւ զօրաւորք թագաւո-
րին, եւ տեսանէին զարսն զի ոչ տի-
րեաց հուրն ի մարմինս նոցա, եւ հեր
գլխոյ նոցա ոչ խանձատեցաւ, եւ վար-
տիք նոցա ոչ այլափոխեցան, եւ հոտ
հրոյ ոչ գոյր ի նոսա։
95 [1]Եւ երկիր եպագ թագաւորն առաջի
նոցա Տեառն։" Եւ պատասխանի ետ
Նաբուքոդոնոսոր եւ ասէ, Օրհնեալ է
Աստուած Սեդրաքայ, Միսաքայ եւ Ա-
բեդնագովի, որ առաքեաց զհրեշտակ
իւր եւ փրկեաց զծառայս իւր, զի յու-
սացան ի նա, եւ զբան թագաւորին ա-
նարգեցին, եւ մատնեցին զմարմինս
իւրեանց ի հուր, զի մի պաշտեսցեն եւ
մի երկիր պագանիցեն ամենայն աս-
տուածոց, բայց միայն Աստուծոյ իւր-
96 եանց։ Եւ արդ ես տամ հրաման. ա-
մենայն ազգք եւ ազինք եւ լեզուք,
որ խօսիցին հայհոյութիւն զԱստուծոյ
Սեդրաքայ, Միսաքայ եւ զԱբեդնագո-
վի՝ ի կորուստ մատնեսցին, եւ տունք
նոցա [2]ի յափշտակութիւն. զի ոչ գոյ
այլ աստուած՝ որ կարող իցէ այնպէս
97 փրկել։ Յայնժամ թագաւորն առաւել
շքեղացոյց զՍեդրաք, զՄիսաք եւ զԱ-
բեդնագով յերկրին Բաբելացւոց, [1]եւ
բարձրացոյց զնոսա, եւ աղաչեաց լինել
նոցա իշխան ամենայն Հրէիցն որ էին
ի թագաւորութեան նորա։"
98 Նաբուքոդոնոսոր արքայ, առ ամե-
նայն ազգս եւ լեզուս որ բնակեալ են
յամենայն երկրի, խաղաղութիւն բազ-
99 մասցի ձեզ։ Զնշանս եւ զարուեստս
զոր արար ընդ իս Բարձրեալն՝ հաճոյ
100 թուեցաւ առաջի իմ պատմել ձեզ, Թէ
որպէս [3]մեծամեծք եւ զօրաւորք են"
արքայութիւն նորա արքայութիւն յա-
ւիտենից. եւ իշխանութիւն նորա ազ-
գաց յազգս։

## ԳԼ. Դ

[1]Տեսիլ հինգերորդ։"

1 Ես Նաբուքոդոնոսոր ուրախ էի ի տան
2 իմում եւ զուարճացեալ[4]. Երազ տեսի
եւ զարհուրեցոյց զիս, եւ խռովեցայ
յանկողնի իմում, եւ տեսիլ գլխոյ իմոյ
3 տագնապեաց զիս։ Եւ ետու հրաման
յինէն ածել առաջի իմ զամենայն իմաս-
տունս Բաբելացւոց, զի զմեկնութիւն
4 երազոյն ցուցցեն ինձ։ Եւ մտին առաջի
իմ գէտք եւ մոգք եւ իղձք եւ քաղ-
դեայք, եւ զերազն ասացի առաջի
նոցա, եւ զմեկնութիւն նորա ոչ ցու-
5 ցին ինձ. Մինչեւ եկն Դանիէլ որում
անուն էր Բաղտասար՝ ըստ անուան աս-
տուծոյ իմոյ, զի հոգի [5]սուրբ Աստու-
6 ծոյ գոյ ի նմա. Ցոր եւ ասացի թէ,
Բաղտասար իշխան, գիտեա զոր ես տե-
սի. գիտեմ եթէ հոգի սուրբ Աստու-
ծոյ" գոյ ի քեզ, եւ ամենայն խորհուրդք
ոչ [6]ծածկին ի քէն". արդ լուր դու զտե-
սիլ երազոյն իմոյ զոր տեսի, եւ զմեկ-
նութիւն նորա ասասցես ինձ։
7 [7]Տեսանէի յանկողնի իմում", եւ ա-
հա ծառ մի ի մէջ երկրի, եւ բարձրու-
8 թիւն նորա բազում յոյժ։ Մեծացաւ
ծառն եւ զօրացաւ, եւ բարձրութիւն նո-
րա եհաս մինչեւ յերկինս, եւ [8]լայնու-
թիւն նորա ի ծագս ամենայն երկրի։
9 Տերեւ նորա գեղեցիկ, եւ պտուղ նո-
րա բազում, եւ կերակուր ամենայնի ի
նմա. ի ներքոյ նորա բնակեալ էին գա-
զանք վայրի, եւ յոստս նորա հանգու-
ցեալ էին թռչունք երկնից, եւ ի նմանէ
կերակրէր ամենայն մարմին։
10 Տեսանէի ի տեսլեան [9]գլխերոյ յան-
կողնի իմում, եւ ահա [10]զուարթուն եւ
11 սուրբ իջանէր յերկնից, Եւ բարբառէր
զօրութեամբ եւ ասէր այսպէս. Հատէք
զծառդ եւ քշտեցէք զոստս դորա, թօ-
թափեցէք զտերեւս դորա, եւ զպտուղս
դորա ցրուեցէք. [11]շարժեսցին գազանքդ
ի ներքոյ դորա, եւ թռչունքդ յոստոց
12 դորա։ Բայց զշառաւիղ արմատոյ դորա
թողէք յերկրի, երկաթապատ եւ պղնձա-
պատ ի դալար վայրի, եւ ի ցօղոյ երկ-
նից հանգիցէ, եւ ընդ գազանս անա-
պատի բաժին դորա, եւ ի խոտ երկրի.
13 Սիրտ նորա ի մարդկանէ փոխեսցի, եւ
սիրտ գազանաց տացի նմա, եւ եւթն

---

[1] ՅԱւրամ. պակաս է [2] Աւրամ. յաւարի [3] Աւրամ. մեծամեծք են նշանք նորա, եւ զօրաւորք են սքանչելիք նորա. [4] Աւրամերէնն յաւելու, յարքունիս իմ

[5] Աւրամ. աստուածոց սրբոց գոյ ի նմա. եւ զերազն առաջի նորա պատմեցի. (6) Բաղտասար, (Բաղտասասար ըստ ԲՆագրին) իշխան մոգուց, գիտեմ եթէ հոգի աստուածոց սրբոց [6] Աւրամ. նեղեն զքեզ [7] Աւրամ. Եւ տեսիլք գլխոյ իմոյ յանկողնի իմում սորա էին. տեսանէի [8] Աւրամ. տեսիլ [9] Աւրամ. գլխոյ իմոյ [10] Այսինքն, պահապան, Կամ, հրեշտակ [11] Աւրամ. փախիցեն

ժամանակք փոխեսցին ի վերայ նորա։
14 [1]Մեկնութեամբ զուարթնոց" է բանս,
եւ պատգամ սրբոց է հարցուածս. զի
ծանիցեն կենդանիք եթէ տիրէ Բարձ-
րեալն թագաւորութեան մարդկան, եւ
ում կամի տացէ զնա. եւ զարհամարհն
ի մարդկանէ յարուցանէ ի վերայ նորա։
15 Այս է երազն զոր տեսի ես Նաբուքո-
դոնոսոր արքայ. եւ դու, Բաղտասար,
ասա ինձ զմեկնութիւն նորա. զի ա-
մենայն իմաստունք թագաւորութեան
իմոյ ոչ կարացին ցուցանել ինձ զմեկնու-
թիւն նորա. այլ դու, Դանիէլ, կարող ես,
զի հոգի [2]սուրբ Աստուծոյ" գոյ ի քեզ։
16 Յայնժամ Դանիէլ որում անուն էր
Բաղտասար՝ հիացաւ իբրեւ ժամ մի, եւ
խորհուրդք նորա խռովեցուցանէին զնա։
Պատասխանի ետ թագաւորն եւ ասէ
ցնա, Բաղտասար, երազն եւ մեկնու-
թիւն նորա մի տագնապեցուսցեն զքեզ։
Եւ պատասխանի Բաղտասար եւ ասէ,
Տէր, երազն ատելեաց քոց, եւ մեկ-
17 նութիւն նորա թշնամեաց քոց։ Ծառն
զոր տեսանէիր մեծացեալ եւ զօրա-
ցեալ, որոյ բարձրութիւնն հասանէր
յերկինս եւ [3]լայնութիւն նորա յամե-
18 նայն երկիր, Եւ տերեւ նորա գեղեցիկ
եւ պտուղ նորա բազում, եւ կերակուր
ամենայնի ի նմա, ի ներքոյ նորա բնա-
կեալ էին գազանք անապատի, եւ յոստս
նորա հանգուցեալ թռչունք երկնից,
19 Դու ես, արքայ, զի մեծացար եւ զօ-
րացար, եւ մեծութիւն քո բարձրացաւ,
եհաս մինչեւ յերկինս, եւ տէրութիւն
20 քո ի ծագս ամենայն երկրի։ Եւ զի տե-
սանէիր, արքայ, զի [4]զուարթունն եւ
սուրբ իջանէր յերկնից եւ ասէր, Կոտո-
ցէք զծառդ եւ ապականեցէք զդա,
բայց զշառաւիղ արմատոյ դորա թողէք
յերկրի, երկաթապատ եւ պղնձապատ
ի դալար վայրի, եւ ի ցօղոյ երկնից
հանգիցէ, եւ ընդ գազանս անապատի
բաժին նորա, մինչեւ եւթն ժամանակք
21 փոխեսցին ի վերայ նորա. Այս է մեկնու-
թիւն նորա, արքայ. եւ [5]դատաստանք
Բարձրելոյն հասեալ ի վերայ տեառն ի-
22 մոյ արքայի. Եւ զքեզ հալածեսցեն ի
մարդկանէ, եւ ընդ գազանս անապատի
եղիցի բնակութիւն քո, եւ խոտ իբրեւ
արջառոյ ջամբեսցեն քեզ, եւ ի ցօղոյ
երկնից [6]հանգիցես, եւ եւթն ժամա-
նակք փոխեսցին ի վերայ քո, մինչեւ
ծանիցես թէ տիրէ Բարձրեալն թագա-
ւորութեան մարդկան՝ եւ ում կամի՝
23 տացէ զնա։ Եւ զի ասաց՝ թէ Թողէք
զշառաւիղ արմատոյ ծառոյն, թագա-
ւորութիւն քո քեզ մնայ՝ մինչեւ ծա-
նիցես [7]զիշխանութիւն երկնաւորին"։
24 Վասն այսորիկ, արքայ, խրատ իմ հա-
ճոյ թուեսցի քեզ, եւ զմեղս քո [8]ողոր-
մութեամբ քաւեսջիր", եւ զանօրէնու-
թիւնս քո՝ գթովք տնանկաց, թերեւս
[9]երկայնամիտ լիցի ի վերայ յանցանաց
քոց Աստուած"։
25 Այս ամենայն եկն եհաս ի վերայ Նա-
26 բուքոդոնոսորայ արքայի։ Յետ երկո-
տասան ամսոյն, մինչդեռ ի վերայ տա-
ճարի թագաւորութեան իւրոյ ճեմէր ի
27 Բաբելոն, Խօսել սկսաւ թագաւորն եւ
ասէ, Ո՞չ այս այն մեծ Բաբելոն է զոր
ես շինեցի ի տուն թագաւորութեան
հաստատութեամբ զօրութեան իմոյ՝ ի
28 պատիւ փառաց իմոց։ Եւ մինչդեռ
բանքն ի բերան էին թագաւորին, ձայն
եղեւ յերկնից եւ ասէ, Քեզ ասեմ, Նա-
բուքոդոնոսոր արքայ, թագաւորութիւն
29 քո անցեալ է ի քէն. Եւ ի մարդկանէ
հալածեսցեն զքեզ, եւ ընդ գազանս ա-
նապատի բնակութիւն քո, եւ խոտ իբ-
րեւ արջառոյ ջամբեսցեն քեզ, եւ եւթն
ժամանակք փոխեսցին ի վերայ քո, մին-
չեւ ծանիցես թէ տիրէ Բարձրեալն թա-
գաւորութեան մարդկան, եւ ում կամի՝
30 տացէ զնա։ Ի նմին ժամու բանն կատա-
րեցաւ ի վերայ Նաբուքոդոնոսորայ. եւ ի
մարդկանէ հալածեցաւ, եւ խոտ իբրեւ
արջառ ուտէր, եւ ի ցօղոյ երկնից մար-
մին նորա ներկաւ, մինչեւ վարսք նո-
րա իբրեւ [10]զառիւծուց մեծացան, եւ
եղնգունք նորա իբրեւ զթռչնոց։
31 Եւ յետ կատարածի աւուրցն, ես Նա-
բուքոդոնոսոր զաչս իմ յերկինս համ-
բարձի, եւ միտք իմ առ իս դարձան.
եւ զԲարձրեալն օրհնեցի, եւ զկենդա-
նին յաւիտենից գովեցի եւ փառաւորե-
ցի. զի իշխանութիւն նորա իշխանու-
թիւն յաւիտենական, եւ տէրութիւն

[1] Աւրմ. Վճռով պահապանաց [2] Աւրմ. աստուածոց սրբոց [3] Աւրմ. տեսիլ [4] Ա. յօրին. պահապան, Կամ, հրեշտակ [5] Աւրմ. վճիռ
[6] Աւրմ. ներկանիցիս [7] Աւրմ. եթէ տիրեն երկինք [8] Աւրմ. արդարութեամբ քաւեսջիր, Կամ ի բաց արա [9] Աւրմ. յերկարեսցի խաղաղութիւն քո [10] Աւրմ. զարծուեաց

32 Նորա ազգաց յազգս։ Եւ ամենայն բնա-
կիչք երկրի իբրեւ զոչինչ համարեցան․
ըստ կամաց իւրոց առնէ ի զօրութեան
երկնից, եւ ի բնակութեան երկրի․ եւ
չիք որ ընդդէմ դառնայցէ ձեռին նորա
33 եւ ասիցէ՝ թէ Զի՞նչ գործեցեր։ Ի նմին
ժամանակի միտք իմ առ իս դարձան,
եւ [1]ի պատիւ թագաւորութեան իմոյ
եկի․ եւ կերպարանք" իմ առ իս դար-
ձան, եւ իշխանք իմ եւ մեծամեծք իմ
խնդրեցին զիս, եւ անդրէն ի թագաւո-
րութիւն իմ հաստատեցայ, եւ մեծու-
թիւն առաւել յաւելաւ ինձ։
34 Արդ ես Նաբուքոդոնոսոր օրհնեմ եւ
առաւել բարձրացուցանեմ եւ փառաւոր
առնեմ զԱրքայն երկնից, զի ամենայն
գործք նորա ճշմարիտ են, եւ շաւիղք
նորա իրաւունք, եւ զամենեսին որք
գնան ամբարտաւանութեամբ՝ կարող է
խոնարհեցուցանել։

ԳԼ․ Ե

1 **Բ**աղտասար արքայ արար ընթրիս մե-
ծամեծաց իւրոց հազար առն. եւ [2]ըստ
2 հազարացն նոյնպէս եւ" գինի։ Եւ իբ-
րեւ ընդ գինիս եմուտ Բաղտասար,
հրամայեաց բերել զսպասս արծաթոյ
եւ ոսկւոյ, զոր եհան Նաբուքոդոնոսոր
հայր նորա ի տաճարէն որ յԵրուսաղէմ,
զի արբցեն նոքօք թագաւորն եւ մե-
ծամեծք իւր, եւ հարճք եւ կանայք
3 իւր։ Եւ բերին զսպասն զոսկեղէնս
[3]եւ զարծաթեղէնս", զոր բերեալ էր ի
տաճարէն Աստուծոյ՝ որ էր յԵրուսաղէմ.
եւ ըմպէին նոքօք թագաւորն եւ մե-
ծամեծք իւր, եւ հարճք նորա եւ կա-
4 նայք։ Ըմպէին գինի, եւ օրհնէին զաս-
տուածս զոսկեղէնս եւ զարծաթեղէնս
եւ զպղնձիս եւ զերկաթիս եւ զփայ-
տեղէնս եւ զքարեղէնս. [3]եւ զԱստուածն
յաւիտենից ոչ օրհնեցին, որ ունէր իշ-
խանութիւն ոգւոց նոցա։"
5 Ի նմին ժամու ելին մատունք ձեռին
մարդոյ, եւ գրէին հանդէպ [4]ջահին ի
վերայ բռելոյ որմոյ տաճարի թագաւո-
րին. եւ թագաւորն տեսանէր զթաթ
6 ձեռինն որ գրէր։ Յայնժամ հատան
գոյնք թագաւորին, եւ խորհուրդ նորա
խռովէին զնա, եւ յօդք միջոյ նորա
լուծանէին, եւ ծունկք նորա զմիմեանս
7 բախէին։ Եւ աղաղակեաց թագա-
ւորն զօրութեամբ՝ ածել զմոգս եւ
զքաղդէացիս եւ զգէտս. [5]եւ ասէ ցի-
մաստունս Բաբելացւոց, Որ ոք ընթերցցի
զգիրդ զայդ, եւ զմեկնութիւն դորա
ցուցանէ ինձ, ծիրանիս զգեցցի, եւ
մանեակ ոսկի ի պարանոց իւր, եւ եր-
րորդ ի թագաւորութեան իմում տի-
8 րեսցէ։ Եւ մտանէին ամենայն իմաս-
տունք թագաւորին եւ ոչ կարէին
զգիրն ընթեռնուլ, եւ ոչ զմեկնութիւն
9 նորա ցուցանել թագաւորին։ Եւ ար-
քայ Բաղտասար խռովեցաւ, եւ գոյն
երեսաց նորա շրջեցաւ. խռովեցան եւ
մեծամեծք նորա ընդ նմա։
10 Եւ եմուտ տիկինն ի տաճարն [6]խրա-
խութեան, եւ ասէ, Արքայ, յաւիտեան
կեաց. մի խռովեցուսցեն զքեզ խոր-
հուրդք քո, եւ գոյն երեսաց քոց մի
11 եղծցի. Զի է այր մի ի թագաւորու-
թեան քում, յորում հոգի [7]սուրբ
Աստուծոյ". եւ յաւուրս հօր քո՝ [8]զօ-
րութիւնք եւ իմաստութիւնք" գտա-
նէին ի նմա. եւ արքայ Նաբուքոդո-
նոսոր հայր քո իշխան կացոյց զնա ի
վերայ գիտաց եւ մոգուց եւ քաղդէից
12 եւ ըղձից։ Զի ոգի առաւել գոյ ի նմա
եւ իմաստութիւն եւ հանճար, մեկնէ զե-
րազս եւ պատմէ զառակս եւ լուծա-
նէ զիրս կապեալս, Դանիէլ. եւ արքայ՝
Բաղտասար անուն եդ նմա. արդ կո-
չեսցի, եւ զմեկնութիւն դորա պատմէ։
13 Յայնժամ ածին ի ներքս զԴանիէլ
առաջի թագաւորին. եւ ասէ թագա-
ւորն ցԴանիէլ, Դո՞ւ ես Դանիէլ յորդ-
ւոց գերութեանն Հրէաստանի, զոր ած
14 [9]Նաբուքոդոնոսոր հայր իմ". Լուայ
զքէն թէ հոգի [10]Աստուծոյ է ի քեզ,
եւ [11]զօրութիւն եւ հանճար եւ ի-
15 մաստութիւն առաւել գտաւ ի քեզ։ Եւ
արդ աւասիկ [12]մտին առաջի իմ իմաս-
տունք եւ [3]մոգք եւ" իղձք, զի զգիրդ
զայդ ընթեռնուցուն եւ զմեկնութիւն

[1] Այլոմ. ի փառս թագաւորութեան իմոյ վայել-
չութիւն իմ եւ պայծառութիւն [2] Այլոմ.
առաջի հազարացն արբ [3] Այլոմ. պակասէ
[4] Այլոմ. աշտանակին

[5] Այլոմ. Ետ պատասխանի թագաւորն եւ [6] Այլոմ.
խրախութեան ըստ բանից թագաւորին եւ մե-
ծամեծաց նորա. Ետ պատասխանի տիկինն
[7] Այլոմ. աստուածոց սրբոց ի նմա [8] Այլոմ. լոյս
եւ հանճար եւ իմաստութիւն ըստ իմաստու-
թեան աստուածոց [9] Այլոմ. արքայ հայր իմ
ի Հրէից [10] Այլոմ. աստուածոց [11] Այլոմ.
լոյս [12] Այլոմ. ածան

զորա ցուցցեն ինձ, եւ ոչ կարացին
16 պատմել [1]ինձ։ Եւ ես լուայ զքէն՝ թէ
կարող ես մեկնել [2]մեկնութիւնս. եւ
արդ եթէ կարիցես զգիրդ ընթեռնուլ
եւ զմեկնութիւն զորա ցուցանել ինձ,
ծիրանիս զգեցցիս, եւ մանեակ ոսկի ի
պարանոցի քում, եւ երրորդ ի թագա-
ւորութեան իմում տիրեսցես։
17 Եւ ասէ Դանիէլ առաջի թագաւորին,
Պարգեւք քո քեզ լիցին, եւ զպատիւ
[3]տան քո՝ այլում տուր. բայց զգիրդ
ես [4]ընթերցայց եւ զմեկնութիւն դորա
18 ցուցից [5]քեզ։ Արքայ, Աստուած Բար-
ձրեալ՝ զմեծութիւն եւ զթագաւորու-
թիւն եւ զպատիւ եւ զփառս ետ Նա-
19 բուքոդոնոսորայ հօր քում. Եւ ի մե-
ծութենէն զոր ետ նմա՝ ամենայն ազգք
եւ ազինք եւ լեզուք զարհուրեալ դո-
ղային յերեսաց նորա. զորս կամէր՝
[7]հարկանէր, զորս կամէր՝ սպանանէր",
եւ զորս կամէր ինքն բարձրացուցանէր,
եւ զորս կամէր ինքն խոնարհեցուցա-
20 նէր։ Եւ յորժամ բարձրացաւ սիրտ
նորա եւ ոգի նորա զօրացաւ յամբար-
տաւանել, անկաւ յաթոռոյ թագաւո-
րութեան իւրոյ, եւ պատիւն բարձաւ
21 ի նմանէն. Եւ ի մարդկանէ հալածեցաւ,
եւ սիրտ ընդ գազանս տուաւ նմա, եւ
ընդ ցիռս բնակութիւն նորա, եւ խոտ
իբրեւ արջառոյ ջամբէին նմա, եւ ի
ցօղոյ երկնից մարմին նորա ներկաւ.
մինչեւ ծանեաւ թէ տիրէ Աստուած
Բարձրեալն թագաւորութեան մարդկան,
22 եւ ում կամի՝ տացէ զնա։ Եւ արդ
դու, որդի նորա Բաղտասար, ոչ խո-
նարհեցուցեր զսիրտ քո [8]առաջի Աս-
տուծոյ՝ ուստի զայդ ամենայն գիտէիր".
23 Եւ ընդդէմ [9]Աստուծոյ երկնից հպար-
տացար, եւ զսպաս տան նորա բերին
առաջի քո, եւ դու եւ մեծամեծք քո,
հարճք քո եւ կանայք քո ըմպէին նո-
քօք գինի. եւ զաստուածս զոսկեղէնս
եւ զարծաթեղէնս եւ զպղնձիս եւ զեր-
կաթիս եւ զփայտեղէնս եւ զքարեղէնս,
որ ոչ տեսանեն եւ ոչ լսեն եւ ոչ իմա-
նան, օրհնէիր, եւ զԱստուած՝ որոյ
շունչ քո ի ձեռին նորա է եւ ամենայն
ճանապարհք քո, զնա ոչ փառաւորե-
24 ցեր։ Վասն այսորիկ յերեսաց նորա ա-
ռաքեցաւ թաթ ձեռինն եւ զգիրդ զայդ
25 գրեաց։ Եւ այս ինչ է գիրդ որ գրեալ
26 է. [10]Մանէ, Թեկեղ, Փարէս"։ Եւ այս է
մեկնութիւն բանից. Մանէ, չափեաց
Աստուած զթագաւորութիւն քո եւ
27 վախճանեաց զնա։ Թեկեղ, [11]կշռեցաւ ի
28 կշիռս եւ [12]գտաւ պակասեալ։ Փարէս,
բաժանեցաւ թագաւորութիւն քո եւ
տուաւ Մարաց եւ Պարսից։
29 Եւ հրաման ետ Բաղտասար եւ զգե-
ցուցին նմա ծիրանիս, եւ մանեակ ոսկի
ի պարանոցի նորա, եւ քարոզ կար-
դայր առաջի նորա լինել իշխան երրորդ
ի թագաւորութեան նորա։
30 Եւ ի նմին գիշերի սպանաւ Բաղտա-
31 սար արքայ Քաղդէացւոց։ Եւ Դարեհ
[13]արքայ առ զթագաւորութիւնն, որ
էր ամաց [14]վաթսուն եւ երկուց։

## ԳԼ. Զ

1 Եւ հաճոյ թուեցաւ առաջի Դարեհի,
եւ կացոյց ի վերայ թագաւորութեանն
նախարարս հարեւր եւ քսան, զի իցեն
2 յամենայն թագաւորութեան նորա. Եւ
ի վերայ նոցա երիս հրամանատարս,
եւ մի ի նոցանէ էր Դանիէլ, [15]տալ նո-
ցա նախարարացն հրաման, զի արքայ
3 աշխատ ինչ մի՛ լիցի"։ Եւ Դանիէլ ա-
ռաւել էր քան [16]զնոսա, զի հոգի ա-
ռաւել գոյր ի նմա. եւ թագաւորն[17]կա-
ցոյց զնա ի վերայ ամենայն արքայու-
թեան իւրոյ։
4 Եւ հրամանատարքն եւ նախարարքն
[3]նախանձէին, եւ" խնդրէին պատճառս
զԴանիէլէ[18]. եւ ամենեւին պատճառս եւ
յանցանս [3]եւ բաղբաղայս" ոչ գտանէին
5 զնմանէ, քանզի հաւատարիմ [19]էր։ Եւ
ասեն հրամանատարքն", Զգտանեմք ուս-

[1] Աշխ. զմեկնութիւն բանին [2] Աշխ. և լուծել զդժուարինս [3] Աշխ. պալատդ [4] Աշխ. ընթերցոյց արքայի [5] Աշխ. նմա [6] Աշխ. մեկնութիւնս, եւ լուծանել առեղծուածս. [7] Աշխ. սպանանէր, և զորս կամէր՝ ապրեցուցանէր [8] Աշխ. մինչ գիտէիր զայս ամենայն [9] Աշխ. Տեառն

[10] Աշխ. Մանէ, Մանէ, Թեկեղ ու Փարսին [11] Աշխ. կշռեցար [12] Աշխ. գտար [13] Աշխ. Մար [14] Աշխ. իբրեւ վաթսուն [15] Աշխ. որոց նախարարքն տացեն համար, զի մի՛ վնաս ինչ կրեսցէ արքայ [16] Աշխ. զհրամանատարս եւ զնախարարս, [17] Աշխ. խորհէր կացուցանել [18] Արամերէնն յաւելու, յիրս թագաւորութեանն [19] Աշխ. էր, եւ ամենեւին սխալ ինչ կամ յանցուած ոչ գտանէին ի նմա։ (5) Յայնժամ արքն այնոքիկ ասեն

տեք պատճառս զԴանիէլէ, բայց եթէ
յօրէնս Աստուծոյ իւրոյ։
6 Յայնժամ հրամանատարքն եւ նախա-
րարքն [1]կացին առաջի թագաւորին, եւ
ասեն ցնա," Դարեհ արքայ, յաւիտեան
7 կեաց։ Խորհուրդ արարին [2]ամենեքեան
որ են ի թագաւորութեան քում", զօ-
րավարք եւ նախարարք, իշխանք եւ
կուսակալք, հաստատել արքունի հաս-
տատութեամբ, եւ [3]զօրացուցանել ուխտ"
մի. զի եթէ խնդրեսցէ ոք խնդրուածս
յամենայն աստուծոյ կամ ի մարդոյ
մինչեւ յաւուրս երեսուն՝ բաց ի քէն,
8 արքայ, անկցի ի գուբ առիւծուց։ Արդ
հաստատեա, արքայ, [4]ուխտն, եւ
գրեա գիր զի մի՛ եղծանիցի հրաման
9 Մարաց եւ Պարսից։ Յայնժամ Դարեհ
արքայ պատուէր ետ գրել զհրամանն"։
10 Եւ Դանիէլ իբրեւ գիտաց թէ [5]կար-
գեցաւ հրամանն", եմուտ ի տուն իւր,
եւ պատուհանք բաց էին նմա ի վեր-
նատունս իւր ընդդէմ Երուսաղեմի. եւ
երիս ժամս յաւուր դնէր ծունր եւ կայր
յաղօթս, եւ գոհանայր առաջի Աստու-
ծոյ իւրոյ, որպէս առնէր յառաջագոյն։
11 Յայնժամ արքն այնոքիկ [6]դիտեցին եւ
գտին զԴանիէլ զի կայր յաղօթս եւ
12 աղաչէր զԱստուած իւր։ [7]Մատեան եւ
ասեն ցթագաւորն, Արքայ, ո՞չ ուխտ
մի կարգեցեր", զի ամենայն մարդ որ
խնդրիցէ խնդրուածս յամենայն աստու-
ծոյ կամ ի մարդոյ մինչեւ յաւուրս ե-
րեսուն, բաց եթէ ի քէն արքայէ,
անկցի ի գուբ առիւծուց։ Եւ ասէ ար-
քայ, Ճշմարիտ է բանդ, զհրամանն Մա-
13 րաց եւ զՊարսից չէ օրէն շրջել։ Յայն-
ժամ պատասխանի ետուն արքային եւ
ասեն, Դանիէլ որ յորդւոց գերութեանն
Հրէաստանի, [8]ոչ հնազանդեցաւ հրա-
մանի քում, արքայ, եւ երիս ժամս
խնդրէ խնդրուածս յԱստուծոյ իւրմէ"։
14 Յայնժամ թագաւորն իբրեւ լուաւ
զբանն՝ տրտմեցաւ յոյժ, եւ վասն Դա-
նիելի ջանայր փրկել զնա, եւ մինչեւ
15 ցերեկս ջանացաւ փրկել զնա։ Յայն-
ժամ արքն այնոքիկ [9]ասեն ցթագա-
ւորն, Գիտասջիր, արքայ, զի հրամանի
Մարաց եւ Պարսից եւ ամենայն [10]ուխ-
տի եւ հաստատութեան զոր արքայ
16 հաստատիցէ, ոչ է օրէն շրջել։ Յայնժամ
հրաման ետ թագաւորն եւ ածին զԴա-
նիէլ, եւ արկին զնա ի գուբն առիւ-
ծուց. եւ ասէ արքայն ցԴանիէլ, Աս-
տուածն զոր դուն պաշտես յաճախ, նա
17 փրկեսցէ զքեզ։ Եւ բերին վէմ մի եւ
եդին ի վերայ գբոյն, եւ կնքեաց թա-
գաւորն մատանեաւ իւրով, եւ մա-
տանեօք մեծամեծացն, զի մի՛ այլ ազգ
ինչ իրք շրջեսցին վասն Դանիելի։
18 Եւ գնաց թագաւորն ի տուն իւր, եւ
ննջեաց առանց ընթրեաց, եւ [11]խորտիկ
ոչ մուծին առաջի նորա, եւ քուն հա-
տաւ ի նմանէ։ [12]Եւ եխից Աստուած
զբերանս առիւծուցն, եւ ոչ լլկեցին
զԴանիէլ"։
19 Յայնժամ յարեաւ արքայն ընդ առա-
ւօտս լուսով, եւ փութով եկն ի գուբն
20 առիւծուց։ Եւ իբրեւ մերձեցաւ ի
գուբն՝ [13]աղաղակեաց ի ձայն մեծ" եւ
ասէ, Դանիէլ, ծառայ Աստուծոյ կեն-
դանւոյ, Աստուածն քո զոր դու յաճախ
պաշտէիր, եթէ կարա՞ց փրկել զքեզ ի
21 բերանոյ առիւծուցդ։ Եւ ասէ Դանիէլ
ցարքայ, Արքայ, յաւիտեան կեաց.
22 Աստուած իմ առաքեաց զհրեշտակ իւր
եւ եխից զբերանս առիւծուցս, եւ ոչ
ապականեցին զիս. զի առաջի նորա
ուղղութիւն գտաւ իմ, եւ առաջի քո,
23 արքայ, մեղս ինչ ոչ արարի։ Յայնժամ
թագաւորն զուարճացաւ յանձն իւր,
եւ հրաման ետ հանել զԴանիէլ ի գբոյ
անտի. հանաւ Դանիէլ ի գբոյ անտի,
եւ ամենեւին ապականութիւն ոչ գտաւ
ի նմա, զի հաւատաց յԱստուած իւր։
24 Եւ հրաման ետ թագաւորն, եւ ածին
զարսն չարախօսս զԴանիելէ, եւ ընկե-
ցան ի գուբն առիւծուց, ինքեանք եւ
որդիք իւրեանց եւ կանայք նոցա. եւ

---

[1] Արդ. խռնեցան զթագաւորաւն եւ ասեն ցնա այսպէս. [2] Արդ. ամենայն հրամանատարք թագաւորութեանն [3] Արդ. կարգել վճիռ [4] Արդ. զվճիռն, և արկ ձեռնագիր հրովարտակին զի մի՛ եղծանիցի ըստ Մարաց եւ Պարսից օրինաց որ է առանց փոփոխելոյ։ (9) Վասն այսորիկ Դարեհ արքայ արկ ձեռնագիր հրովարտակին եւ վճռոյն։ [5] Արդ. արկաւ ձեռնագիր հրովարտակին [6] Արդ. ժողովեցան [7] Արդ. Յայնժամ մատեան և խօսեցան առաջի արքայի զվճռոյ թագաւորին. Ո՞չ ապաքէն արկեր ձեռնագիր վճռոյն [8] Արդ. չհամարի ինչ զքեզ, արքայ, եւ ոչ զվճիռն որում արկեր ձեռնագիր. այլ երիցս յաւուրն առնէ զխնդրուածս իւր

[9] Արդ. խռնեցան զթագաւորաւն և ասեն [10] Արդ. վճռոյ [11] Կամ, վարձակս [12] Արդ. գոցեց [13] Արդ. աղաղակեաց արքայ առ Դանիէլ ի ձայն թախծութեան

չեւ էին յատակս գբոյն հասեալ՝ մինչեւ
տիրեցին նոցա առեւծքն, եւ զամենայն
ոսկերս նոցա մանրեցին ։
25 Յայնժամ Դարեհ արքայ գրեաց առ
ամենայն ազգս եւ ազինս եւ լեզուս,
որ բնակեալ էին յամենայն երկրի. Խա-
26 ղաղութիւն ձեզ բազմասցի. Ցերեւեաց
ինէն եղաւ հրամանս այս ընդ ամենայն
իշխանութիւն թագաւորութեան իմոյ,
զի երկնչիցին եւ դողայցեն յերեսաց
Աստուծոյն Դանիելի. զի նա է Ա-
տուած կենդանի, եւ կայ յաւիտեանս,
եւ արքայութիւն նորա ոչ եղծանի, եւ
տէրութիւն նորա մինչեւ ցվախճան ։
27 Օգնական լինի եւ փրկէ, եւ առնէ
*նշանս յերկինս եւ յերկրի, որ փրկեաց
զԴանիէլ ի բերանոյ առիւծուցն ։
28 Եւ Դանիելի աջողէր ի թագաւորու-
թեանն Դարեհի եւ Կիւրոսի Պարսկի ։

Գլ. Է

1 Յամին առաջնորդի Բաղտասարայ
արքայի [1]Բաղդէացւոց՝ երազ ետես Դա-
նիէլ, եւ տեսիլ գլխոյ նորա յանկողնի
2 իւրում. եւ զերազն [2]գրեաց ։ Ես Դանիէլ
տեսանէի՞ ի տեսլեան գիշերոյ, եւ ահա
չորք հողմք երկնից բախէին զծով մեծ
3 Եւ չորք գազանք մեծամեծք ելանէին
ի ծովէ անտի՝ այլակերպք ի միմեանց ։
4 Առաջինն՝ իբրեւ [3]զմատակ առեւծ
թեւաւոր՞, եւ թեւք նորա իբրեւ արծ-
ւոյ. հայէի մինչեւ թափեցան թեւք
նորա եւ [4]ջնջեցաւ յերկրէ. եւ եկաց
իբրեւ ի վերայ ոտից մարդոյ՞, եւ սիրտ
մարդոյ տուաւ նմա ։
5 Եւ ահա երկրորդ գազանն նման ար-
ջոյ, եւ եկաց ի կողմն մի. եւ կողք
երեք ի բերան նորա, ի մէջ ժանեաց
նորա. եւ այսպէս ասէին ցնա. Արի
կեր զմարմինս բազմաց ։
6 Եւ զկնի նորա հայէի, եւ ահա այլ
գազան իբրեւ զինձ. եւ չորք թեւք
թռչնոյ ի վերայ նորա, եւ չորք գլուխք
գազանին, եւ իշխանութիւն տուաւ նմա ։
7 [5]Եւ զկնի նորա հայէի՞ եւ ահա գա-
զանն չորրորդ՝ ահեղ եւ զարմանալի
եւ հզօր առաւել, եւ ժանիք նորա [6]եր-
կաթիք. ուտէր եւ մանրէր, եւ զմնա-
ցորդսն առ ոտն կոտորէր. եւ ինքն ա-
ռաւել այլակերպ քան զամենայն գա-
զանսն որ յառաջ քան զնա, եւ եղջեւրք
8 տասն ի նմա ։ Պշուցեալ հայէի ընդ եղ-
ջեւրս նորա, եւ ահա այլ եղջեւր փոք-
րիկ ելանէր ի մէջ նոցա, եւ երեք եղ-
ջեւրք յառաջնոցն ի բաց խլէին յերե-
սաց նորա, եւ ահա աչք իբրեւ զաչս
մարդոյ յեղջերն յայնմիկ, եւ բերան որ
խօսէր զմեծամեծս ։
9 Տեսանէի մինչեւ աթոռք անկանէին,
եւ Հինաւուրցն նստէր. հանդերձ նորա
սպիտակ իբրեւ զձիւն, եւ հեր գլխոյ
նորա իբրեւ զասր սուրբ, աթոռ նորա
իբրեւ զբոց հրոյ, անիւք նորա իբրեւ
10 զհուր բորբոքեալ. Գետ հրոյ յորդեալ
ելանէր առաջի նորա. հազարք հազա-
րաց սպասէին զնա, եւ բեւր բիւրուց
կային առաջի նորա. ատեան նստաւ
11 եւ դպրութիւնք բացան ։ Տեսանէի յայն-
ժամ ի բարբառոյ մեծամեծ բանիցն զոր
եղջեւրն այն խօսէր, [7]մինչեւ բարձաւ
գազանն եւ կորեաւ. եւ մարմին նորա՞
12 տուաւ յայրումն հրոյ ։ Եւ այլոց գա-
զանացն իշխանութիւն [8]փոխեցաւ, եւ
երկայնութիւն կենաց տուաւ նոցա մինչեւ
13 ի ժամանակս եւ ի ժամանակս ։ Տեսանէի
ի տեսլեան գիշերոյ, եւ ահա ընդ ամպս
երկնից իբրեւ Որդի մարդոյ գայր, եւ հա-
սանէր մինչեւ ի Հինաւուրցն, եւ մատու-
14 ցաւ առաջի նորա ։ Եւ նմա տուաւ իշ-
խանութիւն եւ պատիւ եւ արքայու-
թիւն. եւ ամենայն ազգք եւ ազինք
եւ լեզուք նմա ծառայեսցեն, եւ իշ-
խանութիւն նորա իշխանութիւն յա-
ւիտենական որ ոչ անցանէ, եւ թա-
գաւորութիւն նորա ոչ եղծանիցի ։
15 Սոսկացաւ մարմին իմ յանձին իմում.
ես Դանիէլ, եւ տեսիլ գլխոյ իմոյ խռ-
16 ովեցոյց զիս ։ Եւ մատեայ առ մի ոմն
յորոց կային անդ, եւ զճշմարտութիւն
խնդրէի ուսանել վասն ամենայնի այ-
նորիկ. եւ ասաց ինձ զճշմարտութիւնն,
եւ զմեկնութիւն բանիցն եցոյց ինձ ։
17 Այդ գազանք [9]մեծամեծք՝ չորք թա-
գաւորութիւնք յարիցեն ի վերայ երկրի,

* Այլ. նշանս եւ արուեստս [1]Այլ. Բաբելացւոց [2]Այլ. գրեաց, գլուխ բանիցն ասէ ։ (2) Պատասխանի ետ Դանիէլ եւ ասէ. Տեսանէի [3]Այլ. զառեւծ [4]Այլ. բարձբացաւ յերկրէ, եւ եկաց իբրեւ մարդ ի վերայ ոտից իւրոց [5]Այլ. Յետ այնորիկ տեսանէի ի տեսլեան գիշերոյ

[6]Այլ. մեծամեծք երկաթիք [7]Այլ. տեսանէի մինչեւ սպանաւ գազանն, եւ կորեաւ մարմին նորա, եւ [8]Այլ. բարձաւ [9]Այլ. մեծամեծք որ են չորք ։

18 բարձելոյն. Եւ՛՛ առցեն զթագաւորու-
թիւնն սուրբք Բարձրելոյն, եւ կալցին
[1]զնա մինչեւ յաւիտեանս յաւիտենից։
19 Եւ խնդրէի ճշմարտիւ վասն գազանին
չորրորդի, զի առաւել այլակերպ էր
քան զամենայն գազանսն եւ ահագին
յոյժ, եւ ժանիք նորա երկաթիք, եւ
մագիլք նորա պղնձիք. ուտէր եւ մանր
րէր եւ զմնացորդսն առ ոտն կոտորէր.
20 Եւ վասն եղջերացն տասանց որ ի
գլուխ նորա, եւ վասն միւսոյն որ ե-
լանէր եւ [2]զերիսն ի բաց թափէր, ո-
րոյ՛՛ աչք էին եւ բերան որ խօսէր
զմեծամեծս, եւ տեսիլ նորա առաւել
21 էր քան զայլոցն։ Տեսանէի, եւ եղ-
ջեւրն այն տայր պատերազմ ընդ սուրբս,
22 եւ զօրանայր ի վերայ նոցա, Մինչեւ
եկն Հինաւուրցն, եւ [3]ետ իրաւունս՛՛
սրբոց Բարձրելոյն. ժամանակ եհաս,
եւ զարքայութիւնն սուրբք ըմբռնեցին։
23 Եւ ասէ, Գազանն չորրորդ՝ թագաւո-
րութիւն չորրորդ կացցէ յերկրի, որ
[4]առաւել իցէ քան զամենայն թագաւո-
րութիւնս, եւ կերիցէ զամենայն եր-
24 կիր, եւ կոխիցէ եւ հարցէ զնա։ Եւ
տասն [5]եղջեւրք նորա՛՛ տասն թագա-
ւորք յարիցեն. եւ զկնի նոցա յարիցէ
այլ, որ [6]առաւել իցէ չարեօք քան զա-
մենայն առաջինսն՛՛, եւ երիս թագա-
25 ւորս խոնարհեցուսցէ. Եւ բանս [7]առ
Բարձրեալն՛՛ խօսեսցի, եւ զսուրբս Բար-
ձրելոյն [8]մոլորեցուսցէ, եւ կարծեսցէ
զժամանակս եւ զօրէնս փոփոխել. եւ
տացի ի ձեռս նորա մինչեւ ի ժամանակ,
եւ ի ժամանակս, եւ ի կէս ժամանա-
26 կաց։ Ատեան նստցի. զիշխանութիւն
նորա փոխեսցեն յապականել եւ ի կո-
27 րուսանել մինչեւ ի սպառ։ Եւ թագա-
ւորութիւն եւ իշխանութիւն եւ մե-
ծութիւն [9]թագաւորաց որ ի ներքոյ ա-
մենայն երկնից՝ տուաւ՛՛ սրբոց Բարձ-
րելոյն. եւ արքայութիւն նորա արքա-
յութիւն յաւիտենական, եւ ամենայն
իշխանութիւնք նմա ծառայեսցեն, եւ
հնազանդեսցին։
28 Մինչեւ ցայս վայր է վախճան բանիս
Ես Դանիէլ, եւ խորհուրդք իմ յոյժ
խռովեցուցանէին զիս, եւ գոյն երե-
սաց իմոց շրջեցաւ, եւ զբանն ի սրտի
իմում պահէի։

ԳԼ. Ը

1 Յամին երրորդի թագաւորութեանն
Բաղտասարայ արքայի, տեսիլ երեւեցաւ
2 [10]ինձ։ Ես Դանիէլ յետ տեսլեանն առաջնոյ,
էի ի Շուշ յապարանսն՛՛ որ է յերկրին
Եղամայ, եւ [11]կայի ի վերայ Ուբաղայ՛՛։
3 Ամբարձի զաչս իմ եւ տեսի, եւ ա-
հա խոյ մի կայր հանդէպ [12]Ուբաղայ,
եւ եղջեւրք նորա՛՛ բարձունք. եւ մին
բարձրագոյն էր քան զմիւսն, եւ որ
4 բարձրն էր՝ յետոյ ելանէր։ Տեսանէի
զխոյն, զի ոգորէր ընդ [13]ծով եւ ընդ
հիւսիսի եւ ընդ հարաւ. եւ ամենայն
գազանք ոչ կային առաջի նորա, եւ
չէր որ ապրէր ի ձեռաց նորա. եւ առ-
նէր ըստ կամաց իւրոց եւ մեծանայր։
5 Եւ ես միտ դնէի եւ ահա քօշ մի
այծեաց գայր յարեւմտից ընդ երեսս
[14]երկրի, եւ յերկիր ոչ մերձենայր. եւ
քօշին եղջեւր մի [15]էր ի մէջ աչացն նորա.
6 Եւ եհաս մինչեւ ի խոյն [16]եղջերաւոր,
զոր տեսանէի զի կայր հանդէպ Ուբա-
ղայ՛՛. եւ յարձակեցաւ ի վերայ նորա
7 զօրութեամբ ուժոյ իւրոյ։ Եւ տեսա-
նէի զնա հասեալ մինչեւ ցխոյն. զայ-
րացաւ եւ եհար զխոյն, եւ խորտակ-
եաց զերկոսին եղջեւրս նորա, եւ ոչ
գոյր զօրութիւն խոյին ունել զդէմ նո-
րա. արկ զնա յերկիր եւ ոտից իւրոց
կոխան արար զնա. եւ ոչ ոք էր որ
8 թափէր զխոյն ի ձեռաց քօշին։ Եւ քօշն
այծեաց մեծացաւ մեծութիւն յոյժ. եւ
ի զօրանալ նորա խորտակեցաւ եղջեւր
նորա մեծ. եւ ելին այլ չորք [17]եղջեւրք
ի ներքոյ՛՛ նորա ընդ չորս հողմս երկ-

չորք թագաւորք են որ յարիցեն յերկրէ։ (18) Եւ [1]Ասոր. զնա մինչեւ յաւիտեան եւ [2]Ասոր. երեքն առաջի նորա ի բաց թափէին. եւ վասն եղջերն որոյ [3]Ասոր. տուան իրաւունք [4]Ասոր. այլակերպ [5]Ասոր. եղջեւրք՝ ի թագաւորութենէ անտի [6]Ասոր. այլակերպ իցէ յառաջնոցն [7]Ասոր. հակառակ Բարձրելոյն [8]Ասոր. ջնջեսցէ [9]Ասոր. թագաւորութեանց որ ի ներքոյ ամենայն երկնից՝ տուաւ ժողովրդեան

[10]Եբր. ինձ Դանիելի յետ տեսլեանն առաջնոյ։ (2) Եւ տեսանէի ի տեսլեանն, եւ եղեւ ի տեսանել իմում, եւ ես էի ի մայրաքաղաքին Շուշ (կամ, Շուշան) [11]Եբր. տեսանէի ի տեսլեանն եւ կայի ի վերայ գետոյն Ուղայ [12]Ա. յոյնն՝ գետոյն. եւ էին նորա եղջեւրք երկու. եղջեւրք [13]Ա. յոյնն, արեւմուտս [14]Եբր. ամենայն երկրի [15]Եբր. էր նշանաւոր [16]Եբր. որ ունէր եղջեւրս երկուս, զոր տեսանէի զի կայր հանդէպ գետոյն [17]Եբր. եղջեւրք նշանաւորք փոխանակ

9 նից ։ Եւ ի միոջէ ի նոցանէ ել եղջիւր
մի [1]հզօր, եւ մեծացաւ առաւել ընդ
10 [2]հիւսիսի ․ Եւ մտ զօրութիւն եւ՞ բարձ-
րացաւ մինչեւ ի զօրութիւնս երկնից, եւ
ընկէց յերկիր ի զօրութենէ երկնից եւ
11 յաստեղաց, եւ կոխեաց զնոսա ․ Մին-
չեւ [3]զօրավարն փրկեսցէ զգերութիւնն.
եւ նովաւ պատարագք խռովեցան ․ եւ
եղեւ եւ յաջողեցաւ նմա ․ եւ սրբու-
12 թիւնն աւերեսցի ։ Եւ տուան ի վերայ
պատարագացն մեղք՞, եւ անկաւ յեր-
կիր արդարութիւն ․ եւ արար եւ յա-
13 ջողեցաւ ։ Եւ լուայ ի միոջէ սրբոյ որ
խօսէր ․ եւ ասէր սուրբ մի [4]զՓելմո-
նին որ խօսէր, Մինչեւ ցե՞րբ տե-
սիլդ այդ կացցէ ․ պատարագք բարձ-
եալք, եւ մեղքդ աւերածի տուեալք,
եւ սրբութիւնդ եւ զօրութիւն կոխես-
14 ցի ։ Եւ ասէ ցնա, Մինչեւ յերեկոյ եւ
ի վաղորդայն, աւուրս երկուս հազարս
եւ երեք հարեւր՞ ․ եւ սրբեսցի սրբու-
թիւնն ։
15 Եւ եղեւ իբրեւ տեսի ես Դանիէլ
զտեսիլն, եւ խնդրէի խելամուտ լինել,
եւ ահա առաջի իմ եկաց իբրեւ զտե-
16 սիլ մարդոյ ։ Եւ լուայ բարբառ մար-
դոյ ի միջոյ Ուղայ, եւ կոչեաց եւ ասէ,
17 Գաբրիէլ, իմացո դմա զտեսիլդ ։ Եւ
եկն եկաց ուր ես կայի ․ եւ ի գալն
նորա՝ զարհուրեցայ եւ անկայ ի վերայ
երեսաց իմոց ․ եւ ասէ ցիս, Ի միտ ա՛ռ,
որդի մարդոյ, զի [5]տակաւին ի ժամա-
18 նակս՞ վախճանի է տեսիլդ ։ Եւ մինչ-
դեռ խօսէր նա ընդ իս, զարհուրեցայ եւ
անկայ ի վերայ երեսաց իմոց յերկիր ․
եւ բուռն եհար զինէն, եւ կացոյց ի
19 վերայ ոտից իմոց ․ Եւ ասէ ցիս, Ահա-
ւասիկ ես ցուցից քեզ որ ինչ լինելոց
է ի վախճանի [6]ի վերայ երկրի ․ քանզի
տակաւին ի ժամանակս է վախճանին՞ ։
20 Խոյն զոր տեսանէիր [7]եղջերաւոր՝ թա-
21 գաւորն Պարսից եւ Մարաց է՞ ։ Եւ քօշն
այծեաց՝ թագաւորն Յունաց է եւ եղ-
ջեւրն մեծ որ էր ի մէջ աչաց նորա,
22 նոյն ինքն է թագաւորն առաջին ։ Եւ
[8]ի խորտակելն նորա ընդ որով էին այլ
եղջեւրքն, չորք թագաւորք յազգէ նո-
րա յարիցեն, եւ ոչ իւրեանց զօրու-
23 թեամբ՞ ։ Եւ յետ թագաւորութեան
նոցա եւ ի կատարել մեղաց նոցա, յա-
րիցէ թագաւոր, ժպիրհ երեսօք, [9]յա-
24 ռակս, խորհրդական ․ Եւ հզօր զօրու-
թիւն նորա, եւ զքանչելիսն ապակա-
նեսցէ՞ ․ եւ յաջողեսցի եւ արասցէ, եւ
ապականեսցէ զհզօրս, եւ զժողովուրդն
25 սուրբ ․ Եւ [10]լուծ անրոյ՞ նորա յաջո-
ղեսցի եւ նենգութիւն ի ձեռս նորա,
եւ ի սրտի իւրում մեծամտեսցի ․ եւ
[11]նենգութեամբ ապականեսցէ զբազումս,
եւ [12]ի կորստեան բազմաց կացցէ, եւ
26 իբրեւ զձուս ի ձեռին մանրեսցէ՞ ։ Եւ
տեսիլն երեկորին եւ առաւօտին որ ա-
սացաւ՝ ճշմարիտ է, եւ դու կնքեա
զտեսիլդ, զի յաւուրս բազումս է ։
27 Եւ ես Դանիէլ ննջեցի եւ խօթացայ[13],
եւ յարեայ եւ գործեցի զգործ արքու-
նի, եւ զարմացեալ էի ընդ տեսիլն ․
եւ ոչ ոք էր որ իմացուցանէր ։

## ԳԼ. Թ

1 Յամին առաջնորդի Դարեհի որդւոյ
[14]Արշաւրայ ի զաւակէ Մարաց, որ թա-
գաւորեաց ի թագաւորութեանն Քաղ-
2 դէացւոց, [15]Ես Դանիէլ խելամուտ եղէ
ի գրոց թուոյ ամացն [16]որ եղեւ բան
Տեառն առ Երեմիա մարգարէ, ի կա-
տարումն աւերածոյն Երուսաղեմի յամս
եւթանասուն ։
3 Եւ դարձուցի զերեսս իմ առ Տէր

[1]Եբր. փոքր [2]Եբր. հարաւ, եւ ընդ արեւելս, եւ ընդ երկիրն փառաւոր ․(10)Եւ [3]Եբր. ի Զօրավարն մեծացաւ, եւ ի նմանէ բարձաւ մշտնջենաւոր զոհն եւ կործանեցաւ տեղի սրբութեան նորա ։ (12) Եւ զօրութիւն տուաւ ընդդէմ մշտնջենաւոր զոհին ամպարշտութեամբ (կամ, վասն ամպարշտութեան տուաւ զօրութիւն ընդդէմ մշտնջենաւոր զոհին) [4]Եբր. ցնա, Մինչեւ ցե՞րբ եղիցի տեսիլն վասն մշտնջենաւոր զոհին եւ ամպարշտութեանն որ կործանէ, եւ կոխան լինելոյ սրբութեանն եւ զօրացն ․(14)Եւ ասէ ցիս․ Մինչեւ յերեկոյ եւ ի վաղորդայն հազարաց երկուց եւ երեքհարիւրոց [5]Եբր. վասն ժամանակի [6]Եբր. բարկութեան, զի վասն ժամանակի սահմանելոյ է տեսիլն

[7]Եբր. որ ունէր եղջիւրս երկուս՝ թագաւորքն Պարսից եւ Մարաց են [8]Եբր. որ խորտակեցաւ, եւ չորքն որ յարեան փոխանակ նորա, չորք թագաւորութիւնք յարիցեն յազգէն յայնմանէ, այլ ոչ ըստ զօրութեան նորա [9]Եբր. եւ որ խելամուտ իցէ գաղտնեաց. (24) Եւ պնդեսցի զօրութիւն նորա, այլ ոչ զօրութեամբ իւրով, եւ ապականեսցէ սքանչելապէս [10]Եբր. յաղագս հանճարոյ [11]Եբր. ի յանդորրութեան [12]Եբր. հակառակ Իշխանին իշխանաց կացցէ, եւ առանց ձեռին մանրեսցի [13]Եբր. [illegible], աւուրս [14]Եբր. Ասուերոսի [15]Եբր. Յառաջնում ամի թագաւորելոյ նորա ես [16]Եբր. զորոց

Աստուած իմ՝ խնդրել աղօթիւք եւ
խնդրուածովք, պահօք եւ խորգով[1].
4 Կայի յաղօթս առ Տէր [2]Աստուած,
գոհացայ" եւ ասեմ, Տէր Աստուած՝
մեծ եւ սքանչելի, որ պահես զուխտ
եւ զողորմութիւն սիրելեաց քոց, որոց
5 պահեն զպատուիրանս քո. Մեղաք, ա-
նօրինեցաք, անիրաւեցաք եւ ապստամ-
բեցաք եւ խոտորեցաք ի պատուիրա-
6 նաց քոց եւ յիրաւանց քոց. Եւ ոչ
լուաք ծառայից քոց մարգարէից որք
խօսեցան յանուն քո առ թագաւորս
մեր եւ առ իշխանս մեր եւ առ հարս
մեր, եւ առ ամենայն ժողովուրդս
7 երկրին։ Քո, Տէր, արդարութիւն, եւ
մեր ամօթ երեսաց իբրեւ յաւուր յայս-
միկ, առն Յուդայ եւ բնակչաց Երու-
սաղեմի, եւ ամենայն Իսրայելի մեր-
ձաւորաց եւ հեռաւորաց յամենայն երկրի
ուր ցրուեցեր զնոսա անդր վասն ան-
հնազանդութեան իւրեանց՝ զոր անհնա-
8 զանդեցան քեզ։ Տէր, մեզ ամօթ ե-
րեսաց մերոց, եւ թագաւորաց մերոց
եւ իշխանաց մերոց, եւ հարցն մերոց
9 որք մեղաք[3]. Եւ Տեառն Աստուծոյ մե-
րոյ գթութիւնք եւ քաւութիւնք. զի
10 ապստամբեցաք ի Տեառնէ, Եւ ոչ լուաք
ձայնի Տեառն Աստուծոյ մերոյ՝ գնալ
յօրէնս նորա զոր ետ առաջի մեր ի
11 ձեռն ծառայից իւրոց մարգարէից։ Եւ
ամենայն Իսրայէլ անցին զօրինօք քովք,
եւ խոտորեցան զի մի՛ լուիցեն ձայնի
քում. եւ եկին ի վերայ մեր անէծք եւ
երդումն՝ գրեալ յօրէնս Մովսիսի ծա-
12 ռայի [4]քո, Տէր". զի մեղաք նմա. Եւ
հաստատեաց զբանս իւր զոր խօսեցաւ
ի վերայ մեր եւ ի վերայ դատաւորաց
մերոց որ դատէին զմեզ՝ ածել ի վերայ
մեր չարիս մեծամեծս, որ ոչ եղեն
ի ներքոյ ամենայն երկնից՝ ըստ այնմ
13 որ եղեն յԵրուսաղէմ։ Որպէս եւ գրեալ
է յօրէնսն Մովսիսի, այն ամենայն չա-
րիք եկին ի վերայ մեր, եւ ոչ աղա-
չեցաք զերեսս Տեառն Աստուծոյ մերոյ՝
դառնալ յանիրաւութեանց [5]հարցն մե-
րոց, եւ խելամուտ լինել ամենայն
14 ճշմարտութեան քում։ Եւ զարթեաւ
Տէր Աստուած մեր ի վերայ չարեացն
մերոց, եւ ած զնոսա ի վերայ մեր. զի
արդար է Տէր Աստուած մեր ի վե-
րայ ամենայն գործոց իւրոց զոր արար
[5]ընդ մեզ", զի ոչ լուաք ձայնի նորա։
15 Եւ արդ, Տէր Աստուած մեր, որ հաներ
զժողովուրդ քո յերկրէն Եգիպտացւոց
հզօր ձեռամբ, եւ արարեր քեզ անուն
որպէս եւ յաւուր յայսմիկ, մեղաք եւ
16 անօրինեցաք։ Տէր, ամենայն ողորմու-
թեամբ քով դարձցի սրտմտութիւն քո,
եւ բարձցի բարկութիւն քո ի քաղաքէ
քումմէ յԵրուսաղեմէ, ի լեռնէ սրբոյ
քո. զի [6]մեղաք, եւ առ անօրէնու-
թեան մերում եւ" հարցն մերոց՝ Երու-
սաղէմ եւ ամենայն ժողովուրդ քո ե-
ղեւ ի նախատինս ամենեցուն որ շուրջ
17 զմեւք են։ Եւ արդ լուր, [5]Տէր Աս-
տուած մեր, աղօթից ծառայի քո եւ
խնդրուածոց, եւ երեւեցո զերեսս քո
վասն [7]քո ի սրբութիւնն" որ աւերեցաւ։
18 Խոնարհեցո, Աստուած իմ, զունկն քո
եւ լուր ինձ. բաց զաչս քո եւ տես
զապականութիւն մեր, եւ զքաղաքին
քո յորոյ վերայ կոչեցեալ է անուն քո.
զի ոչ առ արդարութեանց մերոց ար-
կանեմք զգութս մեր առաջի քո, այլ
19 վասն բազում գթութեան քո։ Տէր,
լուր, Տէր, քաւեա, Տէր, [8]անսա, Տէր",
մի՛ յամեր վասն քո, Աստուած իմ, զի
անուն քո կոչեցեալ է ի վերայ քաղա-
քին [9]քո։
20 Եւ մինչդեռ ես խօսէի եւ յաղօթս
կայի, եւ խոստովան լինէի զմեղս իմ
եւ զմեղս ժողովրդեանն Իսրայելի, եւ
արկանէի զգութս առաջի Տեառն Աս-
21 տուծոյ իմոյ վասն լերինն [10]սրբոյ, Եւ
մինչդեռ խօսէի յաղօթսն, եւ ահա
այրն Գաբրիէլ, զոր տեսանէի յառաջ-
նում տեսլեանն, [11]թռուցեալ եւ" մեր-
ձեցաւ առ իս, իբրեւ ի ժամ երեկորին
22 պատարագին, Եւ խելամուտ արար զիս,
եւ խօսեցաւ ընդ իս եւ ասէ, Դանիէլ,
այժմ [12]եկի խելամուտ առնել զքեզ"։
23 Ի սկզբան աղօթից քոց ել պատգամ, եւ
ես եկի պատմել քեզ. զի այր ցանկա-
լի ես դու. արդ ած զմտաւ զբանդ,
24 եւ ի միտ առ զտեսիլդ։ Եւ եօթանասուն

[1] Եբր. [illegible], եւ մոխրով [2] Եբր. Աստուած իմ, եւ խոստովան եղէ [3] Եբր. [illegible], քեզ [4] Եբր. Աստուծոյ [5] Յեբր. [illegible]

[6] Եբր. վասն մեղաց մերոց և վասն անօրէնութեանց [7] Եբր. Տեառն՝ ի վերայ սրբութեանն [8] Եբր. անսա, եւ արա [9] Եբր. քո եւ ի վերայ ժողովրդեան քո [10] Եբր. սրբոյ Աստուծոյ իմոյ [11] Եբր. անդէն թռուցեալ [12] Եբր. եկի խելամուտ առնել զքեզ իմաստութեան

եւթնեւորդք [1]համառօտեցան ի վերայ
ժողովրդեան քո եւ ի վերայ քաղա-
քին սրբոյ, ի վախճանել մեղաց, եւ ի
կնքել անօրէնութեանց, [2]եւ ի ջնջել
անիրաւութեանց,՟ եւ ի քաւել ամպա-
րշտութեանց, եւ ի գալ յաւիտենական
արդարութեանն, եւ ի կնքել տեսլեան
եւ մարգարէի, եւ յօծանել [3]սրբութեան
25 սրբութեանցն՟։ Եւ գիտասցես եւ խե-
լամուտ լիցիս յելից բանին [4]տալ պա-
տասխանի՟ եւ ի շինելն Երուսաղեմի
մինչեւ յՕծեալն առաջնորդ՝ եւթնե-
րորդք եւթն, եւ եւթներորդ վաթսուն
եւ երկու դարձցին եւ շինեսցին հրա-
պարակքն եւ պարիսպք [5]եւ նորոգես-
26 ցին ժամանակք՟։ Եւ յետ վաթսուն եւ
երկուց եւթներորդաց [6]բարձցի Օծու-
թիւնն, եւ իրաւունք ոչ իցեն ի նմա.
եւ քաղաքն եւ սրբութիւնն ապակա-
նեսցին առաջնորդաւն հանդերձ որ
գայցէ, եւ ջնջեսցին հեղեղաւ. եւ
մինչեւ ի վախճան պատերազմին հա-
մառօտելոյ կարգեսցէ զապականութիւն,
եւ զօրացուսցէ զուխտ բազմաց. եւթ-
ներորդ մի եւ կէս եւթներորդի, դա-
դարեցուսցէ զսեղանս եւ զպատարագս.
եւ մինչեւ ի ծայրս անկեանն ապականու-
թիւն. եւ մինչեւ ցվախճան եւ ցատայնայ
կարգեսցէ ի վերայ ապականութեանն՟։
27 Եւ զօրացուսցէ զուխտ բազմաց եւթնե-
րորդ մի, եւ կէս եւթներորդի բարձցին
զոհք եւ նուէրք. եւ ի վերայ [7]տաճարին
պղծութիւն աւերածոյն կայցէ, եւ մին-
չեւ ի վախճան ժամանակի կատարած
տացի՟ ի վերայ աւերածին։

Գլ. Ժ

[2]Տեսիլ վեցերորդ։՟

1 Յամին երրորդի Կիւրոսի արքայի Պար-
սից՝ բանն յայտնեցաւ Դանիելի որոյ ա-
նուն կոչեցաւ Բաղտասար. եւ ճշմա-
րիտ է բանն, եւ [8]զօրութիւն մեծ եւ
2 հանճար տուաւ նմա ի տեսլեանն՟։ Յա-
ւուրսն յայնոսիկ ես Դանիէլ էի ի սուգ
3 երիս եւթներորդս աւուրց. Հաց ցան-
կութեան ոչ կերայ, եւ միս եւ գինի ոչ
եմուտ ի բերան իմ, եւ իւղով ոչ օծայ,
մինչեւ ի կատարել երից եւթներորդաց
աւուրց։
4 Յաւուրն քսաներորդի եւ չորրորդի
ամսեանն առաջնոյ՝ կայի ես առ ափն
գետոյն մեծի որ է Տիգրիս (Դկղաթ)։
5 Ամբարձի զաչս իմ, եւ ահա այր մի
զգեցեալ [9]փառս, եւ ընդ մէջ իւր ա-
6 ծեալ կամար յոսկւոյն Ոփազայ. Եւ
մարմին նորա [10]ծովազոյն, եւ երեսք նո-
րա իբրեւ զտեսիլ փայլական, եւ աչք
նորա իբրեւ ճառագայթք հրոյ. բազուկք
եւ բարձք նորա իբրեւ զտեսիլ փայլուն
պղնձոյ, եւ բարբառ բանից նորա իբ-
7 րեւ զբարբառ զօրու։ Եւ տեսի ես Դա-
նիէլ միայն զտեսիլն, եւ արքն որ ընդ
իս էին՝ ոչ տեսին զտեսիլն, այլ ահ մեծ
անկաւ ի վերայ նոցա, եւ փախեան
8 [11]զարհուրեալք։ Եւ ես միայն մնացի, եւ
տեսի զտեսիլն զայն մեծ. եւ ոչ մնաց
յիս զօրութիւն, եւ փառք իմ յապակա-
նութիւն դարձան, եւ չհանդարտեցի
9 զօրութեանն։ Եւ լուայ զբարբառ բա-
նից նորա. եւ ի լսելն իմում զբարբառ
բանից նորա՝ կայի հիացեալ, եւ երեսք
իմ յերկիր խոնարհեալ։
10 Եւ ահա ձեռն ձգեալ առ իս՝ կանգ-
նեաց զիս ի ծունգս իմ եւ ի թաթս ձե-
11 ռաց իմոց. Եւ ասէ ցիս, Դանիէլ, այր
ցանկալի, խելամուտ լեր բանիցս զոր
խօսեցայց ընդ քեզ, եւ կաց ի կայի
քում, զի այժմ առաքեցայ առ քեզ.
եւ ի խօսել նորա ընդ իս զբանս զայս՝
12 յոտն կացի դողութեամբ։ Եւ ասէ ցիս,
Մի երկնչիր, Դանիէլ, զի յօրէ յորմէ ե-
տուր զսիրտ քո խելամուտ լինել, եւ
վշտանալ առաջի Աստուծոյ քո, լսելի
եղեն բանք քո, եւ ես եկի ընդ բանից
13 քոց։ Եւ իշխան թագաւորութեանն
Պարսից կայր հակառակ ինձ զքսան եւ
զմի օր. եւ ահա Միքայէլ, մի յառա-
ջին իշխանացն, եկն օգնել ինձ. եւ [12]թո-
ղի զնա անդ ընդ իշխանի թագաւո-
14 րութեանն՟ Պարսից. Եւ եկի խելամուտ
առնել զքեզ որչափ ինչ անցք անցա-
նելոց իցեն ընդ ժողովուրդ քո յաւուրս

[1] Եբր. վճռեցան [2] Յեբր. դադարել [3] Եբր. զՍուրբն սրբոց [4] Եբր. ի նորոգել [5] Եբր. ի նեղութեան ժամանակի իսկ [6] Եբր. հատանիցի Օծեալն եւ ոչ վասն իւր. եւ զքաղաքն եւ զսրբութիւնն ապականեսցէ ժողովուրդ իշխանին որ գալոց է, եւ վախճան նորա եղիցի հեղեղաւ, եւ մինչեւ ի վախճան պատերազմին սահմանեալ են աւերմունք [7] Եբր. աշտարակին, (կամ, թեւոյ) ապականութեանցն իցէ աւերիչն, եւ մինչեւ ի սպառ. եւ սահմանեալն հեղցի [8] Եբր. ճիգն մեծ էր, եւ խելամուտ եղեւ բանին եւ ի միտ առ զտեսիլն

[9] Եբր. բեհեզ [10] Եբր. իբրեւ զբիւրեղ [11] Եբր. զի թաքիցեն [12] Եբր. ես մնացի ընդ թագաւորսն

15 յետինս . զի [1]տեսիլդ յաւուրս է ։ Եւ ի
խօսելն նորա ընդ իս ըստ բանիցս այ-
սոցիկ՝ անկայ ի վերայ երեսաց իմոց
յերկիր , եւ կայի հիացեալ ։
16 Եւ ահա իբրեւ ի նմանութիւն որդ-
ւոյ մարդոյ մերձեցաւ ի շրթունս իմ .
բացի զբերան իմ եւ խօսեցայ , եւ ա-
սեմ ցայն որ կայր յանդիման իմ , Տէր ,
յերեւելդ քո ինձ՝ խռովեցաւ փոր իմ յիս ,
17 եւ ոչ գոյ յիս զօրութիւն ։ Եւ զիա՞րդ
կարիցէ ծառայ [2]քո , տէր ,ˮ խօսել ընդ
տեառն իմում . եւ ոչ եւս է յիս զօրու-
18 թիւն կալոյ , եւ շունչ ոչ մնաց յիս ։ Եւ
յաւել եւս մերձեցաւ յիս իբրեւ զտեսիլ
19 մարդոյ , եւ զօրացոյց զիս . Եւ ասէ ,
Մի՛ երկնչիր , այր ցանկալի , խաղա-
ղութիւն ընդ քեզ , զօրացիր եւ քաջ
լեր . եւ ի խօսել նորա ընդ իս՝ զօրա-
ցայ եւ ասեմ , Խօսեսցի տէր , զի զօ-
20 րացուցեր զիս ։ Եւ ասէ , Եթէ գիտի-
ցե՞ս վասն էր եկի առ քեզ . եւ արդ
դառնամ անդրէն տալ պատերազմ ընդ
իշխանին Պարսից . եւ ես երթայի , եւ
21 իշխանն Յունաց գայր ։ Բայց պատմե-
ցից քեզ զինչ կարգեալ է ի գիրս ճըշ-
մարտութեան. եւ ոչ ոք է ինձ օգնական
այսոցիկ , բայց Միքայէլ իշխանն ձեր ։

## ԳԼ . ԺԱ

1 Եւ ես յառաջնում ամին [3]Կիւրոսի կայի
ի հաստատութեան եւ ի զօրութեանˮ ։
2 Եւ արդ պատմեցից քեզ զճշմարտու-
թիւնն . Ահա երեք թագաւորք յարիցեն
յերկրիդ Պարսից , եւ չորրորդն մեծա-
ցի մեծութիւն մեծ քան զամենեսեան .
եւ յետ զօրանալոյ նորա ի մեծութեան
իւրում , [4]յարիցէ ի վերայ թագաւորու-
թեանցնˮ Յունաց ։
3 Եւ յարիցէ թագաւոր հզօր, եւ տիրեսցէ
տէրութեամբ բազմաւ , եւ արասցէ ըստ
4 կամս իւր . Եւ իբրեւ յարիցէ՝ թագաւո-
րութիւն նորա փշրեսցի, եւ բաժանեսցի
ի չորս հողմս երկնից . եւ ոչ [5]ըստ վախ-
ճանիˮ նորա, եւ ոչ ըստ տէրութեան նորա
զոր տիրեաց . զի խլեսցի թագաւորու-
թիւն նորա , եւ այլոց՝ թող լինիցին ։
5 Եւ զօրասցի թագաւորն հարաւոյ , եւ
մի յիշխանացն զօրասցի ի վերայ նորա ,
6 եւ [6]տիրեսցէ տէրութիւն մեծ ։ Եւ յետ
[7]ամացն իւրեանց խառնակեսցինˮ ընդ
միմեանս . եւ դուստր արքային հարա-
ւոյ մտցէ առ արքայն հիւսիսոյ՝ առնել
դաշինս ընդ նմա . եւ ոչ հանդարտեսցէ
զօրութեան բազկին , եւ ոչ կացցէ [8]զա-
ւակ նորա . եւ մատնեսցի ինքն եւ ա-
ծեալքն իւր , եւ [9]օրիորդն եւ որ զօրա-
ցուցանէր զնա ի ժամանակին ։
7 Եւ յարիցէ [10]ի ծաղկէ արմատոյ նորա
ի վերայ պատրաստութեան իւրոյˮ, եւ
եկեսցէ առ զօրութիւնն . եւ մտցէ ի
հաստատութիւնս թագաւորութեանն
հիւսիսոյ , եւ արասցէ ընդ նոսա , եւ
8 զօրասցի ։ Եւ զաստուածս նոցա *կոր-
ծանեսցէ հանդերձ ձուլածոյիւք նոցա ,
եւ զամենայն սպասս ցանկալիս նոցա՝
զոսկւոյ եւ զարծաթոյ գերի առեալ բե-
րիցէ յԵգիպտոս, եւ ինքն [11]հաստատես-
9 ցի քան զթագաւորն հիւսիսոյ . Եւ մտցէ
ի թագաւորութիւն արքային հարաւոյ ,
եւ դարձցի անդրէն յերկիր իւր ։
10 Եւ որդիք [12]նորա ժողովեսցեն ամբոխ
զօրաց բազմաց . եւ մտցէ զիմեալ , եւ
հեղեղատեսցէ եւ անցցէ, եւ [13]դադարեսցէ,
եւ գրգռեսցի մինչեւ ի զօրութիւնˮ նորա ։
11 Եւ զազանասցի թագաւորն հարաւոյ ,
եւ ելցէ եւ տացէ պատերազմ ընդ թա-
գաւորին հիւսիսոյ. [14]եւ գումարեսցէ զօր
բազում , եւ մատնեսցի [15]զօրն ի ձեռս
12 նորա ։ Եւ առցէ զամբոխն , եւ բարձ-
րասցի սիրտ նորա . եւ կործանեսցէ
13 զբիւրաւորս , եւ ոչ զօրասցի ։ Եւ դարձ-
ցի արքայն հիւսիսոյ , եւ ածցէ զօր բա-
զում քան զառաջինն . եւ ի վախճանի
[16]ժամանակաց եկեսցէ մտանել զօրու
14 մեծաւ եւ բազում [17]ստացուածովք ։ Եւ
ի ժամանակին յայնոսիկ բազումք յա-
րիցեն ի վերայ թագաւորին հարաւոյ .
եւ որդիք [18]մնացելոց ժողովրդեան քո
բարձրասցին ի հաստատել զտեսիլն , եւ

[1] Եբր. տեսիլդ տակաւին [2] Եբր. տեառն իմոյ
[3] Եբր. Դարեհի Մարի կայի ի հաստատել եւ ի
զօրացուցանել զնա [4] Եբր. յարուսցէ զամե-
նեսեան ի վերայ թագաւորութեանն [5] Եբր.
ի յաջորդս

[6] Եբր. տիրեսցէ , եւ տէրութիւն նորա [7] Եբր.
ամաց եղիցին դաշնակից [8] Եբր. նա եւ
բազուկ [9] Եբր. որ ծնունդ զնա [10] Եբր.
մին յոստոց անտի արմատոյ նորա փոխանակ
նորա *Յնբր. դոլոսե [11] Եբր. հաստատեսցի զամս
ինչ առաւել [12] Եբր. նորա տացեն պատե-
րազմ, եւ [13] Եբր. դարձեալ տացէ պատե-
րազմ մինչեւ յամրութիւն [14] Եբր. եւ նա
[15] Եբր. ամբոխն [16] Եբր. ամաց [17] Եբր.
պատրաստութեամբ [18] Եբր. յափշտակչաց

15 ակարասցեն ։ Եւ մտցէ թագաւորն [1]հա-
րաւոյ, եւ կուտեսցէ հող, եւ առցէ
զքաղաքս ամուրս. եւ բազուկք ար-
քային հարաւոյ ոչ հաստատեսցին. եւ
[2]յարիցեն ընտրեալք՝՝ նորա, եւ ոչ իցէ
16 զօրութիւն կալոյ ։ Եւ [3]արասցէ ի մտա-
նելն իւրում առ նա՝՝ զկամս իւր, եւ
ոչ ոք իցէ որ ունիցի զդէմ նորա. եւ
կացցէ յերկրին [4]Սաբիմայ, եւ վախճա-
17 նեսցի ի ձեռս նորա ։ Եւ դիցէ զերեսս
իւր մտանել [5]զօրութեամբ իւրով յա-
մենայն թագաւորութիւնս նորա, եւ
զամենայն ուղղութիւնս առնիցէ ընդ
նմա՝՝. եւ զդուստր կանանց տացէ նմա
յապականութիւն, եւ մի [6]յամրասցի,
18 եւ մի եղիցի նա նորա ։ Եւ դարձուսցէ
զերեսս իւր ի կղզիս, եւ առցէ զբա-
զումս. եւ [7]այրեսցէ զիշխանս որ նա-
խատեցին զնոսա, եւ զնախատինս նո-
19 ցա դարձուսցէ յերեսս նոցա ։ Եւ դարձ-
ցի զօրութեամբ յերկիր իւր՝՝, եւ տկա-
րասցի եւ անկցի, եւ ոչ գտանիցի ։
20 [8]Եւ յարիցէ յարմատոյ նորա տունկ
թագաւորութեան ի վերայ պատրաս-
տութեան նորա, եւ բռնադատիցէ առ-
նել չուք թագաւորութեան. եւ յաւուրսն
յայնոսիկ խորտակեսցի, եւ ոչ երեսօք
21 եւ ոչ պատերազմաւ ։ Կացցէ ի վերայ
պատրաստութեան իւրոյ, զի արհա-
մարհեցաւ, եւ ոչ ետուն նմա փառս
թագաւորութեան. եւ եկեսցէ յաջողու-
թեամբ, եւ բռնադատեսցի թագաւո-
22 րութեանց պայթակղութեամբք ։ Եւ բա-
զուկք այնր որ հեղեղատիցեն, եւ հե-
ղեղատեսցին յերեսաց նորա. եւ խոր-
23 տակեսցի եւ առաջնորդ ուխտին ։ Եւ
այնոցիկ որ խառնիցին ի նա՝ արասցէ
նենգութիւն. եւ ելցէ եւ զօրասցի ի
24 վերայ նոցա սակաւ ազգաւ ։ Եւ յաջո-
ղութեամբ քաղաքս աշխարհօք եկեսցէ՝՝
եւ արասցէ զոր ոչ արարին հարք նո-
րա, եւ ոչ հարք հարց նորա. եւ զա-
ւար եւ զկապուտ եւ զստացուածս բաշ-
խեսցէ նոցա, եւ ի վերայ [9]Եգիպտացւոց
խորհուրդ խորհեսցի մինչեւ ի ժամանակ։
25 Եւ զարթիցէ զօրութիւն նորա, եւ սիրտ
նորա ի վերայ թագաւորին հարաւոյ զօ-
րութեամբ մեծաւ. եւ թագաւորն հարա-
ւոյ խմբեսցէ պատերազմ զօրաւ մեծաւ եւ
հզօրաւ յոյժ, եւ ոչ [10]հանդարտեսցէ. զի
26 խորհեսցին ի վերայ նորա խորհուրդս։ Եւ
[11]կերիցեն որ ինչ նմա անկ իցէ, եւ խոր-
տակեսցեն զնա, եւ զզօրսն այրեսցեն՝՝, եւ
27 անկցին վիրաւորք բազումք ։ Եւ երկո-
ցունց թագաւորացն սիրտք իւրեանց ի
չարութեան. եւ ի միում սեղանի սուտ
խօսեսցին, եւ մի յաջողեսցի. զի [12]վախ-
28 ճանն ի ժամանակս է՝՝ ։ Եւ դարձցի յեր-
կիր իւր մեծութեամբ բազմաւ, եւ
սիրտ նորա ի վերայ ուխտի սրբոյ. եւ
արասցէ եւ դարձցի յերկիր իւր ։
29 [13]Ի ժամանակի դարձցի, եւ եկեսցէ ի
վերայ հարաւոյ, եւ ոչ եղիցի իբրեւ
30 զառաջինն վերջինն ։ Եւ մտցեն ի նա
[14]բանակք Կիտացւոց, եւ խոնարհեսցի եւ
դարձցի եւ բարկասցի ի վերայ ուխտին
սրբոյ, եւ արասցէ, եւ դարձցի եւ [15]զու-
մարեսցի ի վերայ այնոցիկ ոյք թողին
31 զուխտն սուրբ ։ Եւ [16]յարիցեն զաւակք ի
նմանէ՝՝, եւ պղծիցեն զսրբութիւնն [17]բռն-
նութեամբ. եւ փոխեսցեն զհանապա-
զորդութիւնն, եւ տայցեն պղծութիւն
32 ապականութեան ։ Եւ ապականիչք ուխ-
տին ածցեն ի վերայ իւրեանց զգայ-
թակղութիւն՝՝. եւ ժողովուրդ որ ճա-
նաչէ զԱստուած իւր՝ զօրասցին եւ ա-
33 րասցեն ։ Եւ հանճարեղք ժողովրդեանն

[1] Եբր. հիւսիսոյ [2] Եբր. ոչ ժողովուրդ ընտրելոց [3] Եբր. որ գայն ի վերայ նորա՝ արասցէ [4] Ա. յօժնին՝ փառաց [5] Եբր. զօրութեամբ ամենայն թագաւորութեան իւրոյ, եւ ուղիղք ընդ նմա, եւ վճարեսցէ [6] Եբր. կացցէ [7] Եբր. դադարեցուսցէ իշխան մի զնախատինս նորա, նա եւ զնախատինս նորա դարձուսցէ ի նա ։ (19) Եւ դարձուսցէ զերեսս իւր յամրութիւնս երկրին իւրոյ [8] Եբր. Եւ կացցէ փոխանակ նորա այլ որ անցուցանէն հարկահան ի շուք թագաւորութեան, եւ յաւուրս ինչ խորտակեսցի, այլ ոչ բարկութեամբ եւ ոչ պատերազմաւ ։
(21) Եւ յարիցէ փոխանակ նորա անարգ ոք. եւ ոչ տացեն նմա փառս թագաւորութեան, եւ եկեսցէ նա հանդարտութեամբ եւ կալցի զթագաւորութիւնն ողոքանօք ։ (22) Եւ բազկօք հեղեղաւի հեղեղեսցին յերեսաց նորա եւ խորտակեսցին, եւ իշխան ուխտին եւս ։ (23) Եւ յետ մտանելոյ յուխտ ընդ նմա՝ արասցէ նենգութիւն. եւ ելցէ եւ զօրասցի սակաւ ազգաւ ։ (24) Ի հանդարտութեան մտցէ նա յերկիր պարարտ. [9] Եբր. ամբութեանց [10] Եբր. կացցէ [11] Եբր. որ ուտենն զհամադամս նորա՝ խորտակեսցեն զնա, եւ զօրք նորա հեղեղեսցին [12] Եբր. տակաւին վախճանն է վասն ժամանակի սահմանելոյ [13] Եբր. Ի ժամանակին սահմանելոյ [14] Եբր. Նաւք [15] Եբր. դիցէ զուշ իւր [16] Եբր. բազուկք ըստ նմանէ կանգնեսցին [17] Եբր. զամրութիւնն, և բարձցեն զդուհն հանապազորդ, եւ դիցեն զապականիչ պղծութիւնն ։ (32) Եւ զուխտադրուժս մոլորեցուսցէ ողոքանօք

[1]բազում խմբք խեղամուտ եղիցին". եւ
տկարասցին սրով եւ հրով, եւ գերութեամբ
34 եւ յափշտակութեամբ զաւուրս ։ Եւ ի
տկարանալ նոցա՝ օգնականութիւն ինչ
սակաւ գտցեն, եւ յաւելցին ի նոսա
35 բազումք [2]գայթակղութեամբք։ Եւ ի հան-
ճարեղացն տկարասցին ի փորձել զնո-
սա եւ [3]ընտրել, եւ յայտնել մինչեւ ի
վախճան ժամանակի. զի տակաւին [4]ժա-
36 մանակ է ։ Եւ արասցէ ըստ կամաց իւ-
րոց եւ բարձրասցի թագաւորն եւ
հպարտասցի ի վերայ ամենայն աստուա-
ծոց, եւ ի վերայ Աստուծոյն աստու-
ծոց խօսեսցի [5]ամբարտաւանս. եւ յա-
ջողեսցի մինչեւ վախճանեսցի բարկու-
թիւն, քանզի [6]ի վախճան լինելոց է"։
37 Եւ ի վերայ աստուծոց հարց իւրոց
զմտաւ [7]ածցէ, եւ" վասն ցանկութեան
կանանց, եւ զամենայն զիս զմտաւ ոչ
ածցէ, եւ ի վերայ ամենայնի հպար-
38 տասցի. Եւ [8]զԱստուած հզօր ի տեղ-
ւոջէ իւրմէ" փառաւորեսցէ, եւ զաս-
տուած զոր ոչ ծանեան հարք նորա՝
փառաւորեսցէ ոսկւով եւ արծաթով
եւ ականբք պատուականօք եւ ցան-
39 կալեօք ։ Եւ [9]մնասցէ յամուրս փախստա-
կանաց ընդ աստուծոյ" օտարի, եւ յա-
ճախեսցէ [10]փառս. եւ հնազանդեսցուսցէ
նմա" զբազումս, եւ զերկիրն բաժա-
նեսցէ ի պարգեւի ։
40 Եւ ի ժամանակի վախճանի ոգորեսցի
ընդ [11]արքային հարաւոյ. եւ զօրաժողով
լիցի" ի վերայ նորա արքայն հիւսիսոյ,
կառօք եւ հեծելովք եւ նաւօք բազմօք.
եւ մտցէ [12]յերկիրն եւ խորտակեսցէ"
41 եւ անցցէ. Եւ մտցէ յերկիրն [13]Սա-
բայիմ, եւ բազումք [14]տկարասցին. եւ
սոքա իցեն որ ապրիցեն ի ձեռաց նո-
րա, Եդոմ եւ Մովաբ, եւ իշխանու-
42 թիւն որդւոյն Ամոնայ ։ Եւ ձգեսցէ
զձեռն իւր [15]յերկիրն. եւ երկիրն Եգիպ-
43 տացւոց ոչ եղիցի ի փրկութիւն. Եւ
տիրեսցէ ի վերայ [16]գաղտնեաց ոսկւոյ
եւ արծաթոյ, եւ ի վերայ ամենայն ցան-
կալեացն [17]Եգիպտացւոց եւ Լիբէացւոց,
44 եւ Եթէովպացւոց յամուրս նոցա ։ Եւ
ապա համբաւք եւ տագնապք ճեպեսցեն
զնա յարեւելից, եւ ի հիւսիսոյ ե-
կեսցէ սրտմտութեամբ բազմաւ ապա-
45 կանել զբազումս ։ Եւ հարցէ զխորան
իւր յԵփադնոն, ի մէջ ծովուցն ի լեառն
Սարային սուրբ, եւ եկեսցէ մինչեւ ի
կողմն մի նորա. եւ ոչ ոք իցէ որ փըր-
կիցէ զնա ։"

Գլ. ԺԲ

1 Եւ ի ժամանակին յայնմիկ յարիցէ Մի-
քայէլ իշխան մեծ, որ կայ ի վերայ որդւոց
ժողովրդեան քո. եւ եղիցի ժամանակ
նեղութեան, [18]նեղութիւն՝ որպիսի ոչ
եղեւ յորմէ հետէ եղեւ ազգ ի վերայ երկրի
մինչեւ ի ժամանակն յայն. եւ ի ժամանա-
կին յայնմիկ ապրեսցի ժողովուրդ քո,
ամենայն որ գտցի գրեալ ի դպրութեան։
2 Եւ բազումք ի ննջեցելոց ի հող երկրի՝
յարիցեն, ոմանք ի կեանս յաւիտենա-
կանս, եւ ոմանք ի նախատինս եւ յա-
3 մօթ յաւիտենականս ։ Եւ իմաստունք
ծագեսցեն իբրեւ զլուսաւորութիւն ի
հաստատութեան, եւ [19]բազումք յար-
դարոց" իբրեւ զաստեղս յաւիտեանս՝
եւ եւս ։
4 Եւ դու, Դանիէլ, փակեա զբանսդ,
եւ կնքեա զգիրդ՝ մինչեւ ի ժամանակ
վախճանի, մինչեւ ուսցին բազումք,
եւ բազմասցի գիտութիւն ։
5 Եւ տեսի ես Դանիէլ, եւ ահա [20]եր-
կու կային յայսկոյս եւ յայնկոյս գե-
6 տոյն ։ Եւ ասեն ցայրն որ զգեցեալն էր
[21]զբադէնն, եւ կայր ի վերայ ջուրց գե-
տոյն, Մինչեւ ցե՞րբ իցէ վախճան սքան-
7 չելեացդ [18]զոր ասացեր"։ Եւ լուայ յառ-
նէն որ զգեցեալն էր [21]զբադէնն եւ կայր

[1]Ոմն. խեղամուտ արասցեն զբազումս [2]Ոմն. ողոքանօք [3]Ոմն. սրբել եւ սպիտակացուցանել [4]Ոմն. վասն ժամանակի սահմանելոյ [5]Ոմն. ահագինս [6]Ոմն. որ սահմանեալն է՝ կատարեսցի [7]Ոմն. ոչ ածցէ, եւ ոչ [8]Ոմն. զաստուածն ամրութեանց ի տեղւոջ իւրում [9]Ոմն. վճարեսցէ գործ ի բերդս ամուրս ընդ աստուծոյն [10]Ոմն. փառս որոց ճանաչեն զնա, եւ հնազանդեսցուսցէ նոցա [11]Ոմն. Նմա արքայն հարաւոյ. եւ եկեսցէ իբրեւ մրրիկ [12]Ոմն. յերկիրս եւ ողողեսցէ [13]Ա. յոյնն՝ փառաց [14]Կամ, գլորեսցին [15]Ոմն. յերկիրսն

[16]Ոմն. գանձուց [17]Ոմն. Եգիպտացւոց. եւ Լիբէացիք եւ Եթէովպացիք զկնի հետոց նորա ։ (44)Եւ ապա համբաւք տագնապեցուսցեն զնա յարեւելից եւ ի հիւսիսոյ. եւ նա ելցէ սրտմտութեամբ բազմաւ ապականել եւ ջնջել զբազումս ։ (45)Եւ հարցէ զխորանս արքունեաց իւրոց ի մէջ ծովուց եւ ի լերին փառաց սրբութեան (կամ, ի մէջ ծովուց, ի լերին փառաց սրբութեան), սակայն հասցէ ի վախճան իւր, եւ ոչ ոք իցէ որ օգնիցէ նմա ։ [18][illegible] [19]Ոմն. որ արդարացուցանեն զբազումս՝ փայլեսցեն [20]Ոմն. երկու այլք [21]Ա. յոյնն՝ զբեհեզն

ի վերայ ջուրց գետոյն, ամբարձ զաջ
իւր եւ զձախ իւր յերկինս, եւ երդուաւ
ի կենդանին յաւիտենից, թէ ի ժամա-
նակ, եւ ի ժամանակս, եւ ի կէս ժա-
մանակի, եւ ի կատարել ցրման [1]ձեռին
ժողովրդեանն սրբեցելոյ՝ [2]ծանիցեն զայս"
ամենայն։
8 Եւ ես լուայ, եւ ոչ առի ի միտ. եւ
ասեմ, Տէր, զի՞նչ է վախճան այդոցիկ։
9 Եւ ասէ, Երթ, Դանիէլ, զի արգելեալ
եւ կնքեալ են բանքս մինչեւ ցժամա-
10 նակ վախճանի։ [3]Ընտրեսցին եւ սպի-
տակասցին եւ փորձեսցին [4]եւ սրբես-
ցին" բազումք, եւ անօրինեսցին անօ-
րէնք, եւ ոչ [5]առնուցուն ի միտ ամ-
պարիշտք". եւ իմաստունք իմասցին։
11 [6]Ի ժամանակէ փոփոխմանն յաճախու-
թեան, եւ տացի պղծութիւն աւերա-
ծին աւուրս հազար երկերիւր երեսուն
12 եւ հինգ. Եւ երանի" որ համբերեսցէ
եւ հասցէ յաւուրս հազար երեք հարեւր
13 երեսուն եւ հինգ։ Եւ [7]դու եկ հանգիր,
զի տակաւին են աւուրք եւ ժամք ի
կատարումն վախճանի, եւ հանգիցես.
եւ յարիցես ի ժամանակի" քում ի վախ-
ճանի աւուրց։

### [8]ԳԼ. ԺԴ

65 Եւ թագաւորն Աստիագէս յաւելաւ առ
հարս իւր, եւ առ Կիւրոս Պարսիկ զթա-
1 գաւորութիւն նորա։ Եւ Դանիէլ էր կե-
նաց կցորդ թագաւորին, եւ փառաւոր
քան զամենայն բարեկամս նորա։
2 Եւ էին կուռք մի Բաբելացւոց անուն
Բէլ. եւ ելանէր նմա ռոճիկ աւուր միոջ
նաշիհ՝ երկոտասան արդու, եւ քառա-
3 սուն ոչխար, եւ գինի՝ վեց մար։ Եւ
թագաւորն պաշտէր զնա, եւ երթայր
հանապազ երկիր պագանէր նմա։ Բայց
Դանիէլ պագանէր երկիր Աստուծոյ իւ-
րում. եւ ասէ ցնա թագաւորն, Դու ըն-
4 դէ՞ր ոչ երկիր պագանես Բելայ։ Եւ նա
ասէ, Բանզի ոչ պաշտեմ զկուռս ձե-
ռագործս, այլ զԱստուած կենդանի՝ զԱ-
բարիչն երկնի եւ երկրի, որ ունի իշ-
5 խանութիւն ամենայն մարմնոյ։ Եւ ասէ
ցնա թագաւորն, Իսկ Բէլ ո՞չ թուի քեզ
թէ իցէ Աստուած կենդանի. եթէ ո՞չ
տեսանիցես՝ որչափ ուտէ եւ ըմպէ հա-
6 նապազ։ Եւ ասէ Դանիէլ ծիծաղելով,
Մի՛ խաբիր, արքայ, զի դա է ի ներ-
քոյ կաւեայ, եւ արտաքոյ պղնձի. ոչ
կերեալ դորա երբեք եւ ոչ արբեալ։
7 Եւ բարկացեալ թագաւորն՝ կոչեաց
զքուրմս նորա, եւ ասէ ցնոսա թա-
գաւորն, Եթէ ոչ ասիցէք ինձ, ո՞վ ու-
տէ զծախսն զայն, մահու մեռանիցիք.
8 Ապա եթէ յայտ առնիցէք՝ թէ զայն ա-
մենայն Բէլ ուտէ, մեռանիցի Դանիէլ՝
զի հայհոյեաց զԲէլ։ Եւ ասէ Դանիէլ
ցթագաւորն, Եղիցի ըստ բանի քում։
9 Եւ էին քուրմք Բելայ եւթանասուն,
թող զկանայս եւ զմանկտի։ Եւ եկն
թագաւորն Դանիելիւ հանդերձ ի տուն
10 Բելայ։ Եւ ասեն քուրմք Բելայ, Ահա-
ւասիկ մեք արտաքս ելցուք. եւ դու,
արքայ, դիր առաջի դորա զկերակուրսդ,
եւ զգինիդ՝ խառնեալ դիցես. եւ փա-
կեա զդուրսդ եւ կնքեա մատանեաւ
11 քով։ Եւ եկեալ ընդ առաւօտս, եթէ ոչ
գտցի այդ ամենայն կերեալ ի Բելայ,
մեռցուք մեք. ապա թէ ոչ՝ Դանիէլ որ
12 սուտ խօսեցաւ զմէնջ։ Եւ նոքա վստահ
էին, զի արարեալ էին ընդ սեղանովն
մուտ անյայտ, եւ ընդ այն մտանէին
13 հանապազ եւ ուտէին զայն։ Եւ եղեւ
իբրեւ ելին արտաքս, եւ թագաւորն եդ
զկերակուրսն առաջի Բելայ։ Եւ հրա-
ման ետ Դանիէլ իւրում մանկտւոյ, եւ
բերին մոխիր, եւ ցանեցին ընդ ամե-
նայն մեհեանն առաջի թագաւորին միայ-
նոյ. եւ ելեալ արտաքս՝ փակեցին
զդուռնն, եւ կնքեցին մատանեաւ թա-
14 գաւորին եւ գնացին։ Եւ քուրմքն մտին
գիշերի ըստ սովորութեան իւրեանց՝
կանամբք եւ որդւովք իւրեանց, կերան
զամենայն եւ արբին, եւ ոչ ինչ թո-
15 ղին։ Եւ կանխեաց թագաւորն ընդ ա-
ռաւօտն Դանիելիւ հանդերձ. եւ ասէ,
16 Ո՞ղջ են կնիքդ, Դանիէլ։ Եւ նա ասէ,
17 Ողջ են, արքայ։ Եւ եղեւ ընդ բանալ
դրանցն՝ հայեցաւ թագաւորն ի սեղանն,
ի ձայն մեծ աղաղակեաց եւ ասէ, Մեծ
ես, Բէլ, եւ ոչ գոյ նենգութիւն ի
18 քեզ եւ ոչ մի։ Եւ ծիծաղեցաւ Դանիէլ,
եւ կալաւ զթագաւորն զի մի՛ մտցէ ի

---

[1] Այլքն՝ զօրութեան [2] Եբր․ կատարեսցի այս [3] Եբր․ Սրբեսցին [4] Յեբր․ պակաս
[5] Եբր․ առնուցու ի միտ եւ ոչ մի ամպարիշտ
[6] Եբր․ Եւ ի ժամանակէ անտի բառնալոյ մշտնջենաւոր զոհին եւ դնելոյ պղծութեան աւերածին՝ աւուրք հազար երկերիւր եւ իննսուն։(12) Երանի [7] Եբր․ դու երթ ի վախճան, զի հանգիցես, եւ կացցես ի վիճակի [8] Այս ԺԴ․ գլուխ պակաս յԵբրայականն։

ներքս, եւ ասէ, Աղէ հայեաց ընդ յա-
19 տակդ, եւ տես ո՛յր է հետք այդ։ Եւ
ասէ թագաւորն, Տեսանեմ հետս արանց,
20 կանանց եւ մանկտւոյ։ Յայնժամ բար-
կացեալ թագաւորն կալաւ զքուրմսն
եւ զկանայս եւ զորդիս նոցա. եւ ցու-
ցին նմա զգաղտնի դուրսն՝ ընդ որ մտա-
21 նէին եւ ծախէին զսեղանն։ Եւ կոտո-
րեաց զնոսա թագաւորն, եւ զԲէլ ետ
ի ձեռս Դանիէլի, եւ կործանեաց զնա
եւ զմեհեան նորա։
22 Եւ էր վիշապ մի մեծ, եւ պաշտէին
23 զնա Բաբելացիքն։ Եւ ասէ թագաւորն
ցԴանիէլ, Միթէ եւ զդմանէ՞ ասիցես
թէ պղնձի է. ահաւասիկ կենդանի է,
ուտէ եւ ըմպէ. եւ ոչ կարես ասել թէ
չիցէ դա Աստուած կենդանի. արդ եկ
24 պագ դմա երկիր։ Եւ ասէ ցնա Դանիէլ,
Ես Տեառն Աստուծոյ իմում երկիր պա-
գանեմ, զի նա է Աստուած կենդանի։
25 Բայց դու, արքայ, տուր ինձ իշխա-
նութիւն, եւ սպանից զվիշապդ առանց
սրոյ եւ գաւազանի։ Եւ ասէ թագաւորն՝
26 Տուեալ քեզ։ Եւ առ Դանիէլ եւղ, ձիւթ
եւ ճարպ եւ մազ, եւ եփեաց ի միասին
եւ արար գնդակս, եւ եհար ի բերան
վիշապին. եւ իբրեւ կերաւ՝ պայթեաց
վիշապն. եւ ասէ, Տեսէք զպաշտա-
27 մունս ձեր։ Եւ եղեւ իբրեւ լուան
Բաբելացիքն՝ բարկացան յոյժ, եւ կու-
տեցան ի վերայ թագաւորին, եւ ասեն,
Հրեայ եղեւ թագաւորն, զԲէլ կործա-
նեաց, եւ զվիշապն սպան, զքուրմսն
28 կոտորեաց։ Եւ իբրեւ եկին, ասեն ցթա-
գաւորն, Տուր մեզ ի ձեռս զԴանիէլ.
ապա թէ ոչ՝ սպանանեմք զքեզ եւ զտուն
29 քո։ Եւ իբրեւ ետես թագաւորն՝ եթէ
կարի տագնապեն զնա, հարկաւ ի ձեռս
30 ետ նոցա զԴանիէլ։ Եւ նոքա արկին զնա
ի գուբն առիւծուց, եւ անդ էր վեց
31 օր։ Եւ էին ի գբին եւթն առիւծք, եւ
տային նոցա հանապազ երկուս մարդս
եւ երկուս պատարուճակս. բայց յայն-
ժամ ոչ ինչ արկին նոցա, զի վաղվա-
32 ղակի կերիցեն զԴանիէլ։ Եւ էր Ամբա-
կում մարգարէ ի Հրէաստանի. եւ եփ-
եաց թան, եւ բրդեաց հաց ի կուր,
եւ երթայր յանդ՝ տանել մշակաց իւրոց։
33 Եւ ասէ հրեշտակ Տեառն ցԱմբակում,
Տար զճաշդ զոր ունիս՝ ի Բաբելոն
34 Դանիելի՝ ի գուբն առիւծուց։ Եւ ասէ
Ամբակում, Տէր, զԲաբելոն իմ չիք
տեսեալ, եւ զգուբն ոչ գիտեմ ուր իցէ։
35 Եւ բուռն եհար հրեշտակն զգագաթա-
նէ նորա, եւ կալաւ զվարսից գլխոյ
նորա, եւ եդ զնա ի Բաբելոն ի վերայ
գբոյն սաստկութեամբ հոգւոյ իւրոյ։
36 Եւ աղաղակեաց Ամբակում եւ ասէ,
Դանիէլ, Դանիէլ, արի առ զճաշդ զոր
37 առաքեաց քեզ Աստուած։ Եւ ասէ
Դանիէլ, Յիշեցեր զիս, Աստուած, եւ
38 ոչ ընդ վայր հարեր զսիրելիս քո։ Եւ
յարեաւ Դանիէլ եւ եկեր. եւ հրեշտակն
Աստուծոյ տարաւ զԱմբակում նոյնժա-
39 մայն անդրէն ի տեղի իւր։ Եւ թագա-
ւորն եկն յաւուրն եւթներորդի աշխա-
րել զԴանիէլ. եւ իբրեւ եկն ի բերան
գբոյն եւ հայեցաւ, եւ ետես զի նստէր
Դանիէլ, աղաղակեաց ի ձայն մեծ եւ
40 ասէ, Մեծ ես, Տէր Աստուած Դանիելի,
41 եւ չիք այլ ոք բաց ի քէն։ Եւ առ
զնա ի վեր. եւ զչարասակարս կորս-
տեան նորա արկին ի գուբն, եւ դէմ դէմ
պատառեցան նոյնժամայն առաջի նորա։

# ԳԼՈՒԽՔ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑՆ

## ԳԼՈՒԽՔ ՈՎՍԷԻ ՄԱՐԳԱՐԷԻ

| | Գլ. | Համ. |
|---|---|---|
| Հրամայի առնուլ կին պոռնիկ, եւ զորդիսն որ ծնանիցին՝ անուանել Յեզրայել, եւ Ոչ ժողովուրդ իմ և Զողորմեալ։ | Ա. | 1 |
| Պատուհասէ զժողովուրդն վասն պոռնկութեան, եւ կանխաւ գուշակէ զկորուստն, եւ դիւրութիւնս ինչ յետ կորստեանն։ Իսկ ուխտեցից նոցա ուխտ՝ հանդերձ գազանօք անապատի, եւ խօսեցայց զքեզ ինձ հաւատովք՝ մարթի ի հաւատացեալսն Քրիստոսի առնուլ։ | Բ. | 1 |
| Հրաման առնու առնել կին շուն, այնու զաւերն Հրէաստանի յայտնէ։ | Գ. | 1 |
| Պատուհասէ զժողովուրդն եւ զքահանայսն վասն բազում եւ մեծամեծ մեղաց. բամբասէ զնոսա յարբեցութիւն եւ ի շնութիւն եւ ի ցասումն։ | Դ. | 1 |
| Պատուհասէ զի բարձին յԱստուծոյ զյոյս, եւ յԱսորեստանեայսն ապաստան եղեն, եւ յԵգիպտացիսն պանծային. եւ կանխաւ գուշակէ նոցա զպատիժս։ | Ե. | 8 |
| Ասէ թէ պատերազմաւ ճոխացաւ Եփրեմ, եւ չարկանէ յօգուտ զաջողութիւն։ | Է. | 13 |
| Յուցանէ Աստուած զիւր խնամս առ Իսրայելացիս, և զնոցա ապախտաւորութիւնն առ նա. եւ կանխաւ գուշակէ նոցա զվիշտս։ | ԺԱ | 1 |

## ԳԼՈՒԽՔ ՅՈՎԵԼԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

| | Գլ. | Համ. |
|---|---|---|
| Զպէսպէս պտղոց նշանակէ, զերկրին ասէ, և խրատ տայ հաշտեցուցանել զԱստուած։ | Ա. | 2 |
| Զելս Ասորեստանեայն գուշակէ, և յետ այնորիկ դիւրութիւն ինչ մարգարէանայ։ | Բ. | 1 |
| Զդէպս լեզուացն որ Առաքելովքն լինելոց էր գուշակէ. մարգարէանայ եւ զկորուստ ազգացն՝ որ եղեւ յետ ելիցն ի Բաբելոնէ առ Զորաբաբելիւ։ Կայ եւ այլաբանութիւն ինչ ի տեղւոջս յայսմիկ. այլաբանութիւն ասի՝ յորժամ զայլ ինչ ասիցէ և զայլ ինչ նշանակէ։ | Բ. | 28 |

## ԳԼՈՒԽՔ ԱՄՈՎՍԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

| | Գլ. | Համ. |
|---|---|---|
| Զանօրէնութիւնս Դամասկոսի, զԳազայ, զՏիւրոսի, զԵդովմայեցւոց, զԱմոնացւոց, զՄովաբացւոց, զՅուդայ, զԻսրայելի համարի. եւ յառաջագոյն ասէ զպատիժսն որ մի ըստ միոջէ պատահելոց էին նոցա։ | Ա. | 2 |
| Զերախտիսն որ եղեն յԱստուծոյ՝ թուէ, և զնոցա կարճմտութիւնն և զարհամարհութիւնն և զհարուածսն որ պատահեցին նոցա։ | Գ. | 2 |
| Զկանայս Սամարեայ յարբեցութիւն և յափշտակութիւն բամբասէ. եւ յառաջագոյն գուշակէ զսովըն եւ զլքանելըն վասն չդառնալոյ նոցա. զի բազում հարուածովք հարան, եւ չեղեն պիտանիք։ | Դ. | 1 |
| Պատուհասէ զԻսրայէլ զի ընդ յանդիմանիչս իւրեանց դժկամակ լինէին, և խրատէ դառնալ առ Աստուած։ Սպառնայ և անհաւատիցն թէ չարիք հասանելոց են նոցա. քանզի զնոցանէ ասէ՝ թէ Վայ որ ցանկան աւուր Տեառն։ Իսկ ոմանք զայն ի հանդերձեալ դատաստանն առին. որպէս այժմ իսկ ասեն բազումք յանհաւատից թէ Զիք դատաստան։ | Ե. | 1 |
| Հրաժեշտ ի տօնից նոցա, ի զոհից եւ ի պաղատանաց. աստ աստուածոյն Ռեմփայ՝ զԿռոնոս կոչէ. քանզի հեթանոսք աստուածոյն իւրեանց Կռոնեայ ասեն թէ աստղ է յերկինս։ Միթէ զենումն կամ զո՞հս մատուցէք ինձ զքառասուն ամ. քանզի ոչ թէ ռամիկն մատուցանէր, այլ միայն իշխանն՝ յորժամ կանգնեցաւ խորանն. բայց աստ զամենայն ժողովրդեանն ասէ, եւ բամբասէ զնոսա յանչափ փափկութիւն, եւ յառաջագոյն գուշակէ զվիշտս։ | Ե. | 21 |
| Մարախով եւ դատաստանաւ և ադամանդիւ՝ զկոտորումն նոցա մարգարէանայ։ Եւ զգացոյց զայն Ամասեայ թագաւորին. բանադատէ զմարգարէն եւ հալածէ. իսկ նա եւ նմա մարգարէանայ չարիս եւ ժողովրդեանն։ | Է. | 1 |
| Տեսանէ գործի հաւորսաց, եւ այնու զըմբռնելըն նոցա նշանակէ։ | Ը. | 1 |
| Զանօրէնութիւնս եւ զամպարշտութիւնս համարի, եւ զհանդերձելոց չարեացն որ հասանելոց են նոցա՝ գուշակէ։ Մտցէ արեգակն ի միջօրէի, զչարչարանացն ժամանակէն Քրիստոսի նշանակէ, եւ զհաւատացելոցն ի նա։ | | |

## ԳԼՈՒԽՔ ԱԲԴԻՈՒ ՄԱՐԳԱՐԷԻ

Զպատժոցն Եդովմայեցւոց զոր կրելոց էին՝ յառաջագոյն գուշակէ, վասն յառնելոյ նոցա ի վերայ Իսրայելացւոցն ընդ այլ թշնամեացն եղելոյ։

Գլ. Համ.

## ԳԼՈՒԽՔ ՅՈՎՆԱՆՈՒ ՄԱՐԳԱՐԷԻ

*Յովնանու մարգարէութիւն, եւ փախուստ ի Թարսիս, եւ մրրկել ծովուն, եւ ի ձկանէն կլանել, և կարասւոյն ի նաւէն ընկենուլ. եւ ապաշխարութիւն Նինուէացւոցն եւ փրկութիւն, եւ աճել դդմենւոյն եւ կործնել ։*

## ԳԼՈՒԽՔ ՄԻՔԻԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

*Զհանդերձեալ աւերն Սամարիայ և զԵրուսաղեմի յառաջագոյն գուշակէ. եւ զպատճառն յաւելու. յարէ ի նոյն եւ զելսն նոցա ի Բաբելոնէ ։* Ա. 2

*Պատուհասք եւ ամբաստանութիւնք իշխանաց ժողովրդեանն, և զքահանայից եւ զսուտ մարգարէից ։* Գ. 1

*Զեկեղեցւոյ՝ որ հաստատելոց էր ի Տէր մեր, եւ վասն Նորոց Կտակարանաց. քանզի առաջին օրէնքն ի Սինայէ տուան, եւ սա ի Սիոնէ. եւ վասն խոր խաղաղութեանս ։* Դ. 1

*Զչարիսն որ միւսանգամ հասանելոց էին Հրէից՝ յառաջագոյն գուշակէ ։* Դ. 8

*Վասն մարմնաւոր ծննդեանն Քրիստոսի, եւ հաւատացելոց ի նա. եւ եղիցին ասէ մնացորդքն Յակոբայ, զորս Պաւղոս առաքեալ ասէ՝ թէ Մնացորդքն ապրեսցին ։* Ե. 2

*Դատաստան Տեառն ընդ ժողովրդեան իւրոյ, եւ համար երախտեաց նորա, եւ հրաժեշտ ի զոհիցն ։ Ողբայր մարգարէն զի նուազեցան արք արիք եւ արդարք. եւ մօտ ի կատարածն՝ յետ պատուհասելոյն եւ ապականելոյն վիշտս մեծամեծս՝ եւ դիւրութիւնս գուշակէ Իսրայելի ։* Զ. 1

## ԳԼՈՒԽՔ ՆԱՒՈՒՄԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

*Վասն Աստուծոյ զօրութեանն ճառէ ։* Ա. 2

*Վասն Առաքելոցն գուշակէ, յաւելու եւ զելս Բաբելացւոցն ի վերայ Նինուէացւոցն. ասէ եւ զզօրութիւն քաղաքին եւ զմեծութիւն մինչչեւ գերեալ էր ։* Ա. 15

## ԳԼՈՒԽՔ ԱՄԲԱԿՈՒՄԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

*Զանիրաւութիւն ժողովրդեանն ճառէ, վասն որոյ եւ զելս Քաղդէացւոցն գուշակէ ։* Ա. 2

*Վասն Հրէից անհաւատութեանն, եւ մերոյ հաւատոցն ի Քրիստոս կայ աստ. մարգարէանայ և զկորուստ Բաբելացւոցն. եւ Արդարն իմ ի հաւատոց կեցցէ աստ կայ ։ Բայց մեծ մասն մարգարէիս վասն անիրաւութեան ժողովրդեանն եւ յափշտակութեան եւ խաբէութեան եւ նենգութեան ։* Բ. 1

*Կայ եւ յաղօթսն Ամբակումայ մարգարէութիւն վասն Քրիստոսի ։* Գ. 2

## ԳԼՈՒԽՔ ՍՈՓՈՆԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

*Սպառնայ մեծամեծ սպառնալիս Հրէից, և խրատէ դառնալ առ Աստուած ։* Ա. 2

*Ըստ ճառին սպառնայ Մովաբացւոց և Ամոնացւոց. յաւելու եւ զՆինուէացւոցն կորուստն, եւ առակաւ՝ զկործանումն Սատանայի ։* Բ. 4

*Վասն դարձի այնոցիկ՝ որ ի Քրիստոս էին հաւատալոց, խօսի ։* Գ. 14

## ԳԼՈՒԽՔ ԱՆԳԷԻ ՄԱՐԳԱՐԷԻ

*Սա յետ ելիցն ի Բաբելոնէ մարգարէանայ, եւ պատուհասէ զԻսրայելացիսն. զի զիւրեանց տանց փոյթ յանձին ունէին շինելոյ, եւ զտաճարին շինուածոյ անփոյթ առնէին ։ Սպառնայ նոցա վասն այնորիկ սովով ։ Խրատէ մխել ի գործս տաճարին. եւ Դարձեալ միւսանգամ շարժեցից զերկինս՝ զոր ի Հեբրայեցւոց թղթին ասէ Պաւղոս՝ աստ կայ ։*

## ԳԼՈՒԽՔ ԶԱՔԱՐԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

*Եւ սա յետ ելիցն ի Բաբելոնէ մարգարէանայ. եւ յիշեցուցանէ նոցա զմեղս հարցն իւրեանց եւ զտանջանս զոր կրեցին, եւ խրատէ մի՛ ի նմին կալ ։ Յաղաչել հրեշտակին զԱստուած վասն Երուսաղեմի՝ մարգարէանայ դիւրութիւնս քաղաքին մարգարէս, եւ չորիս ազգաց որք ծառայեցուցին զնոսա ։ Բայց եղջեւրքն՝ թագաւորութիւնքն են որ յարեան ի վերայ Հրէիցն, Ասորեստանեայք, Բաբելացիք, Բանանացիք եւ Յոյնք. իսկ որեղն աստ տկարագոյն առնելն է. քանզի որ ինչ որի՝ անօրինայ ։* Ա. 2

*Վասն հաւատալոյն ի Քրիստոս. տեսանէ եւ զՅեսու Յովսեդեկայ եւ զաշտանակն ոսկի. երկուս որդիս պարարտութեան՝ զքահանայն եւ զթագաւորն կոչէ ։* Բ. 1

*Յայնժամ տեսանէ զգերանդին. քանզի այն ինչ եկեալ էին ի գերութենէ՝ վիճէին ընդ միմեանս վասն վիճակաց և բաժնից ։ Զի մի՛ զմիմեանս զրկիցեն՝ ցուցանէ նոցա զգերանդին անիծից, զկշիռն կապարեայ. պատիժք անիրաւաց եւ անօրինաց են. եւ վասն չորից կառացն ։* Ե. 1

*Հրամայի առնուլ ոսկի և գործել պսակ քահանային. իսկ զի Ահաւասիկ*

Գլ. Համր.

այր եւ արեւելք անուն նորա՝ ի Քրիստոս առնուն ոմանք, եւ մարթի առնուլ ։ Զ. 9

Մնացեալ Հրէայքն պահէին վասն գերութեանն. հարցանեն աստ և ասեն, Հաստատեցաւ սրբութիւնն, այսինքն՝ ամենայն պաշտօնն, և տաճարին առաջին վայելչութիւնն, թէ տակաւին ի տրտմութեա՞ն իցեմք. եւ պա՞րտ իցէ տակաւին տրտմել եւ սուգ առնուլ ։ Ոչ այնու ինչ պարտ է, ասէ, հաշտեցուցանել զԱստուած, այլ իրաւունս առնելով, զարդարութիւն գործելով, եւ չպահելով ոխս ընդ ընկերին, եւ ողորմելով տնանկին. քանզի զայս ասէ պատուիրեցի զառաջինն, եւ ոչ լուան ինձ, եւ ցրուեցի զնոսա ։ Է. 1

Զառաջին լրութիւնն մարգարէանայ Երուսաղեմի, և խրատէ զինչ պարտ է գործել, եւ որպէս հաճոյ լինել ։ Ը. 3

Վասն այնոցիկ որ ի Քրիստոս դառնալոց էին ։ Ը. 20

Հակառակ Դամասկոսի, Սիդոնի, Գազայ, Ակկարոնի, Ասկաղոնի ։ Թ. 1

Ուրախ լեր յոյժ, դուստր Սիոնի, ահա թագաւոր քո գայ, որ վասն Քրիստոսի է ասացեալ, աստ կայ ։ Թ. 9

Հովուացն Իսրայելի սպառնայ, և ժողովրդեանն՝ դիւրութեան աւետիս տայ, եւ զյայտնութեանն՝ որ առ Մակաբայեցւովքն եղեւ. աստ կայ եւ զրոյցն երեսուն արծաթոյն ։ ԺԱ. 4

ԶԱնտիոքայ ամպարշտի զգործսն գուշակէ ։ ԺԱ. 15

Վասն չարչարանացն Քրիստոսի, եւ հանդերձեալ դատաստանին ։ ԺԲ. 1

Հարից զհովիւն եւ ցրուեսցին խաշինքն՝ աստ կայ, զոր յինքն եւ յԱռաքեալսն է առ Քրիստոս ։ ԺԳ. 7

Վասն աւուրն յորում խաչեցաւ Քրիստոս ։ ԺԴ. 5

---

## ԳԼՈՒԽՔ ՄԱՂԱՔԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

Եւ սա յետ ելիցն ի Բաբելոնէ մարգարէանայ ։ Սակս պատուհասէ մարգարէս վասն պատարագացն զոր մատուցանէին. որպէս թէ ոչ մտադիր մատուցանեն քահանայքն. գոգցես՝ քամահանօք ընդ արհամարհանս մատուցանէին զպաշտօն պատարագացն. եւ եղծանէին ապականէին զօրինացն ուղղութիւն ։ Ա. 2

Պատուհասէ վասն կնահանութեան ։ Բ. 13

Վասն Քրիստոսի գալստեանն. իսկ թէ հրեշտակ կոչէ զնա, ընդ այն մի՛ ինչ զարմանար. զի եւ այլուր Հրեշտակ մեծի խորհրդոյ ասէ զնա ։ Բայց ոմանք ոչ զՔրիստոսէ, այլ զԵզրէ ասեն ասացեալ ։ Գ. 1

Զայս զՔրիստոսէ ասէ, թէ մինչեւ եկեալ օր Տեառն, զհանդերձեալ դատաստանէն ասէ ։ Դ. 5

ԳԻՐՔ ՏԵՍԱՆՈՑ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՍՈՒՐԲ ՄԱՐԳԱՐԷԻՑ

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ՈՎՍԵԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 Բան Տեառն որ եղեւ առ Ովսէէ որդի
²Բէերեայ, յաւուրս Ոզիայ եւ Յովա-
թամու եւ Աքազու եւ Եզեկեայ՝ թագա-
ւորաց Յուդայ, եւ յաւուրս Յերոբո-
վամայ որդւոյ Յովասայ թագաւորին
Իսրայէլի։
2 Սկիզբն բանից Տեառն առ Ովսէէ։ Եւ
ասէ Տէր ցՈվսէէ, Գնա առ դու քեզ
կին պոռնկութեան, եւ որդիս պոռ-
նկութեան. զի պոռնկելով *պոռնկեսցի
երկիր ի Տեառնէ։
3 Եւ չոգաւ եւ առ զԳոմեր՝ զդուստր
Դաբեղայիմայ. եւ յղացաւ եւ ծնաւ նմա
4 որդի։ Եւ ասէ ցնա Տէր, Կոչեա զա-
նուն նորա Յեզրայէլ. քանզի սակաւիկ
մեւս եւս խնդրեցից զարիւնն Յեզրա-
յէլի ի տանէն Յէուայ, եւ դադարեցու-
ցից զթագաւորութիւն տանն Իսրայէլի։
5 Եւ եղիցի յաւուր յայնմիկ խորտակե-
ցից զաղեղն Իսրայէլի ի ձորձորն Յեզ-
րայէլի։
6 Յղացաւ միւսանգամ եւ ծնաւ դուստր.
եւ ասէ ցնա, Կոչեա զանուն նորա Չո-
ղորմեալ. զի ոչ եւս յաւելից ողորմել
տանն Իսրայէլի, ³այլ ընդդէմ կացից
7 նոցա հակառակութեամբ։ Բայց որդ-
ւոցն՝ Յուդայ ողորմեցայց, եւ փրկե-
ցից զնոսա Տերամբ Աստուծով իւրեանց.
եւ ոչ փրկեցից զնոսա աղեղամբ եւ ոչ
սրով եւ ոչ պատերազմաւ, ¹ոչ կառօք՝
8 եւ ոչ երիվարօք եւ ոչ հեծելօք։ Եւ
մեկնեաց ի ստենէ զՉողորմեալն. դարձ-
9 եալ յղացաւ եւ ծնաւ որդի։ Եւ ասէ,
Կոչեա զանուն նորա Ոչ ժողովուրդ
իմ. զի դուք չէք ժողովուրդ իմ, եւ
10 ես ոչ ⁴ինչ եմ ձեր։ Եւ էր՝ թիւ որդ-
ւոցն Իսրայէլի իբրեւ զաւազ ծովու
անչափ եւ անթիւ. եւ եղիցի ի տեղ-
ւոջ յորում ասացաւ Ոչ ժողովուրդ իմ
դուք, անդ կոչեսցին նոքա Որդիք Աս-
11 տուծոյ կենդանւոյ։ Եւ ժողովեսցին
որդիքն Յուդայ եւ որդիքն Իսրայէլի ի
միասին, եւ դիցեն իւրեանց ⁵իշխանու-
թիւն մի. եւ ելցեն յերկրէ անտի, զի
մեծ է օրն Յեզրայէլի։

## ԳԼ. Բ

1 Ասացէք ⁶եղբարց ձեր Ժողովուրդ իմ,
2 եւ ⁷քերցն ձեր՝ Ողորմեալ. Դատեցա-
րուք ընդ մօր ձերում, դատեցարուք,
զի նա ոչ է իմ կին, եւ ես ոչ եմ այր
նորա. եւ ⁸բարձից զպոռնկութիւն նո-
րա յերեսաց իմոց, եւ զշնութիւն նո-
3 րա՝ ի միջոյ ստեանց իւրոց։ ⁹Զի ա-
պարից զնա մերկ, եւ կացուցից զնա
ըստ աւուրց ծննդեան իւրոյ. եւ եդից
զնա իբրեւ զանապատ, եւ կարգեցից
զնա իբրեւ զերկիր անջուր, եւ սպա-
4 նից զնա ի ծարաւոյ։ Եւ որդւոց նորա
ոչ ողորմեցայց, զի որդիք պոռնկու-
5 թեան են։ Զի պոռնկելով պոռնկեցաւ
մայր նոցա, եւ յամօթ ¹⁰արար որ ծնաւն
զնոսա. զի ասաց, Երթայց զհետ հո-
մանեաց իմոց, որք տային ինձ զհաց
իմ եւ զջուր եւ ¹¹զհանդերձ եւ զկտաւ
իմ եւ զգինի իմ եւ զձէթ իմ եւ զամե-
6 նայն ինչ որ պիտոյ է ինձ։ Վասն այ-
նորիկ ես փակեցից զճանապարհս նորա
¹²պատնիշօք, եւ առականեցից զճանա-
պարհս նորա, եւ՝ զշաւիղս իւր մի՛
7 գտցէ։ Եւ ընթասցի զհետ հոմանեաց
իւրոց, եւ մի՛ հասցէ նոցա. խնդրեսցէ

¹ Յեբր. գոլեաւ ² Եբր. Բէերեայ * Եբր. պոռնկեցաւ
³ Եբր. թէ ներելով ներեցից նոցա (կամ, բառնե-
լով բարձից զնոսա)։ (7) Բայց տանն ⁴ Եբր. եղէց
ձեզ Աստուած։ (10) Սակայն եղիցի

⁵ Եբր. գլուխ ⁶ Եբր. ցեղբարս ⁷ Եբր. ցքորս
⁸ Եբր. բարձցէ զպոռնկութիւն իւր յերեսաց իւ-
րոց, եւ զշնութիւն իւր ⁹ Եբր. Զի մի՛ ¹⁰ Եբր.
եղեւ ¹¹ Եբր. զասր իմ եւ զկտաւ իմ,
զձէթ իմ եւ զըմպելիս իմ ¹² Եբր. փշովք,
եւ պատեցից զնա որմովք, զի

զնոսա, եւ մի՛ գտցէ զնոսա. եւ ա-
սասցէ, Երթայց եւ դարձայց առ այրն
իմ առաջին, զի յայնժամ բարի էր ինձ
8 քան արդ։ Եւ նա ոչ գիտաց թէ ես
ետու նմա զցորեանն եւ զգինին եւ
զձէթն, եւ բազմացուցի նմա [1]արծաթ.
եւ նա արար արծաթեղէնս, եւ ոսկե-
9 ղէնս յաճախեաց Բահաղու"։ Վասն այ-
նորիկ [2]դարձուցից եւ առից զցորեանն
իմ ի ժամանակի իւրում, եւ զգինին
իմ [3]եւ զձէթն ի ժամանակի իւրեանց,
եւ զերծից ի նմանէ զհանդերձ" իմ
եւ զկտաւ իմ, զի մի՛ ծածկեսցէ զծա-
10 նակտնս իւր։ Եւ արդ յայտնեցից զպղծ-
ծութիւն նորա առաջի հոմանեաց իւ-
րոց. եւ ոչ ոք հանիցէ զնա ի ձեռաց
11 իմոց։ Եւ դարձուցից զամենայն բարե-
կենդանութիւնս նորա եւ զտօնս նորա
եւ զամսագլուխս նորա եւ զշաբաթս
նորա, եւ զամենայն [4]վաճառս նորա։
12 Եւ ապականեցից զայգիս նորա եւ
զթզենիս նորա, զոր միանգամ ասաց՝
թէ Կապէնք իմ են այս զոր ետուն ինձ
հոմանիքն իմ. եւ եդից զայն [5]ի վկա-
յութիւն. եւ կերիցեն զայն գազանք ա-
նապատի [6]եւ թռչունք երկնից եւ սո-
13 ղունք երկրի"։ Եւ խնդրեցից ի նմանէ
վրէժ զաւուրցն Բահաղիմայ յորս զո-
հէր նոցա. դնէր զխունկս, եւ արկանէր
զքառամանեակս իւր, եւ երթայր զհետ
հոմանեաց իւրոց, եւ զիս մոռացեալ
էր, ասէ Տէր։
14 Վասն այնորիկ ահաւասիկ ես ստե-
րիւրեցից զնա, եւ [7]կարգեցից զնա իբրեւ
զանապատ". եւ խօսեցայց ի սիրտ նո-
15 րա։ Եւ տաց նմա [8]զստացուածս իւր
անտի, եւ զծործորն Աքովրայ՝ [9]բանալ
զմիտս նորա. եւ խոնարհեսցի անդ"
ըստ աւուրց տղայութեան իւրոյ, եւ
ըստ աւուրց ելանելոյ նորա յերկրէն
16 Եգիպտացւոց։ Եւ եղիցի յաւուր յայն-
միկ, ասէ Տէր, կոչեսցէ զիս Այր իմ,
17 եւ ոչ կոչեսցէ զիս [10]Բահաղիմ։ Եւ բար-
ձից զանուանս Բահաղիմայ ի բերանոյ
նորա, եւ մի՛ եւս յիշեսցին անուանք
18 նոցա։ Եւ եղից [11]նոցա ուխտ յաւուր
յայնմիկ հանդերձ գազանօք անապատի
եւ թռչնովք երկնից եւ սողնօք երկրի.
եւ զաղեղն եւ զսուսեր եւ զճակատա-
մարտ խորտակեցից յերկրէ, եւ բնակե-
19 ցուցից [12]զքեզ յուսով"։ Եւ խօսեցայց
զքեզ ինձ յաւիտեան, եւ խօսեցայց
զքեզ ինձ արդարութեամբ եւ իրաւամբք
20 եւ ողորմութեամբ եւ գթութեամբք. Եւ
խօսեցայց զքեզ ինձ [13]հաւատովք, եւ
21 ծանիցես զՏէր։ Եւ եղիցի յաւուր յայն-
միկ, ասէ Տէր, [14]լուայց ես երկնից, եւ
22 երկինք լուիցեն երկրի, Եւ երկիր լուի-
ցէ" ցորենոյ եւ գինւոյ եւ ձիթոյ, եւ
23 նոքա [15]լուիցեն Յեզրայելի. Եւ սերմա-
նեցից զնա ինձ ի վերայ երկրի. եւ
ողորմեցայց չողորմելոյն, եւ ասացից
24 ցոչ ժողովուրդ իմ, Ժողովուրդ իմ ես
դու. եւ նա ասասցէ, Տէր Աստուած
իմ ես դու։

## Գլ. Գ

1 Եւ ասէ ցիս Տէր, Դարձեալ երթ դու
եւ սիրեա կին մի որ [16]սիրիցէ զչարու-
թիւն" եւ իցէ շուն, որպէս սիրեաց
Աստուած զորդիսն Իսրայելի, եւ նոքա
հայէին յաստուածս օտարս, եւ սիրէին
2 կտապս չամչեղէնս։ Եւ վարձեցայ ես
ինձ [17]հնգետասան արծաթոյ եւ քոռի միոջ
3 գարւոյ եւ մարու միոջ գինւոյ". Եւ
ասեմ ցնա, Աւուրս բազումս նստցես
դու ինձ եւ ոչ եւս պոռնկեսցիս, եւ
ոչ եւս եղիցես առն [18]այլում։
4 Զի աւուրս բազումս նստցին որդիքն
Իսրայելի առանց թագաւորի եւ առանց
իշխանի եւ առանց պատարագաց եւ ա-
ռանց [19]սեղանոյ եւ առանց քահանայու-
5 թեան եւ առանց յայտնութեանց"։ Եւ
յետ այնորիկ դարձցին որդիքն Իսրա-
յելի, եւ խնդրեսցեն զՏէր Աստուած
իւրեանց, եւ զԴաւիթ արքայ իւրեանց.
եւ զարմասցին ի Տէր եւ ի բարութիւնս
նորա յաւուրս կատարածի։

## Գլ. Դ

1 Լուարուք զբան Տեառն, որդիք Իսրա-

[1] Եբր. արծաթ եւ ոսկի, զոր արարին Բահաղ [2] Եբր. դարձայց [3] Եբր. ի ժամանակին սահմանելոյ, եւ զերծից զասր [4] Եբր. տարեկանս [5] Եբր. յանտառ [6] [illegible] [7] Եբր. տարայց զնա յանապատ [8] Եբր. զայգի [9] Եբր. ի դուռն յուսոյ. եւ երգեսցէ երգս [10] Այլք՝ Տէր իմ [11] Եբր. վասն նոցա

[12] Եբր. զնոսա յապահովս [13] Եբր. ճշմարտութեամբ [14] Եբր. տաց պատասխանի. տաց պատասխանի երկնից. եւ նոքա տացեն պատասխանի երկրի, (22) Եւ երկիր տացէ պատասխանի [15] Եբր. տացեն պատասխանի [16] Եբր. սիրեցի յընկերէն [17] Եբր. զնա հնգետասան արծաթոյ և քոռի միոջ և կիսոյ գարւոյ [18] Եբր. այլում, եւ ես նոյնպէս առ քեզ [19] Եբր. կոթող եւ եփուդ եւ առանց թերափիմի

յեյի, զի դատաստան Տեառն է ընդ
բնակիչս երկրի. զի ոչ գոյ ճշմարտու-
թիւն, եւ ոչ ողորմութիւն, եւ ոչ գի-
2 տութիւն Աստուծոյ ի վերայ երկրի։ Ա-
նէծք եւ ստութիւն եւ սպանութիւն
եւ գողութիւն եւ շնութիւն [1]հեղեալ ի
վերայ երկրի՝՝, եւ արիւն ընդ արիւնս
3 խառնին։ Վասն այնորիկ սուգ առցէ
երկիր, եւ նուաղեսցի ամենայն [2]բնակ-
չօք իւրովք, եւ գազանօք անապատի,
եւ սողնովք երկրի՝՝, եւ թռչնովք երկ-
նից. եւ ձկունք ծովու պակասեսցին։
4 [3]Զի ոչ ոք իցէ որ դատիցի, եւ ոչ այն որ
յանդիմանիցէ. [4]բայց ժողովուրդ իմ իբրեւ
5 զքահանայն հակառակօղ։ Եւ տկարասցին
ի տուէ, եւ տկարասցի եւ մարգարէն ընդ
քեզ. գիշերոյ նմանեցուցի զմայրն քո։
6 Նմանեցաւ ժողովուրդ իմ այնմիկ՝
յորում ոչ դոյր գիտութիւն՝՝. զի դու
զգիտութիւն մերժեցեր, մերժեցից եւ ես
զքեզ, զի մի՛ եւս քահանայանայցես ինձ.
եւ մոռացար զօրէնս Աստուծոյ քո,
7 մոռացայց եւ ես զորդիսն քո։ Ըստ
բազմութեան իւրեանց՝ նոյնպէս եւ մե-
ղան ինձ. զփառս նոցա յանարգութիւն
8 հատուցից։ [5]Զմեղս ժողովրդեան իմոյ
կերիցեն, եւ անիրաւութեամբք իւր-
9 եանց առցեն՝՝ զանձինս իւրեանց։ Եւ
եղիցի որպէս ժողովուրդն՝ նոյնպէս եւ
քահանայն. եւ խնդրեցից վրէժ ի նմա-
նէ, ըստ ճանապարհաց նորա եւ ըստ
10 խորհրդոց նորա հատուցից նմա։ Կերի-
ցեն, եւ մի՛ յագեսցին. [6]պոռնկեսցին, եւ
մի՛ յաջողեսցին. զի զՏէր թողին,
անխտիր լինել ի պոռնկութիւն։
11 Եւ զգինի եւ զարբեցութիւն ընկալաւ
12 սիրտ ժողովրդեան իմոյ։ Ի քուեայս հար-
ցանէին, եւ գաւազանօք նորա պատ-
մէին նմա.՝՝ այսով պոռնկութեան մո-
լորեցան, եւ պոռնկեցան յԱստուծոյ
13 իւրեանց։ Ի գլուխս լերանց զոհէին եւ
ի վերայ բլրոց [7]զենուին, ի ներքոյ
կաղնեաց եւ կաղամախեաց եւ վարսա-
ւոր ծառոց, զի հաճոյ թուէր հովանին.
վասն այնորիկ պոռնկեսցին դստերք
14 ձեր, եւ շնասցին հարսունք ձեր։ Եւ
ոչ արարից այց դստերաց ձերոց յոր-
ժամ պոռնկեսցին, եւ հարսանց ձերոց՝
յորժամ շնասցին. զի նոքա ընդ պոռ-
նիկս թաւթաւէին եւ ընդ նուիրեալս
զոհէին, եւ ժողովուրդն [8]քո որ ոչ ի-
մանայր զայն՝ խառնակէր ընդ պոռնիկս։
15 Բայց դու, Իսրայէլ, մի՛ աղէտալ լինիր,
եւ Յուդա,՝՝ մի՛ մտանէք ի Գաղգաղա,
եւ մի՛ ելանէք ի տուն Ովնայ, եւ մի՛
16 երդնուցուք ի Տէր կենդանի։ Զի իբրեւ
[*]երինջ լծընկէց եղեւ ինձ Իսրայէլ. արդ
արածեսցէ զնոսա Տէր իբրեւ զգառն
17 յանդորրու։ Հաղորդ կռոց Եփրեմ, [9]եդ
անձին իւրում գայթակղութիւն. ցան-
կացան կռոցն Քանանացւոց, ամենեք-
եան սիրեցին զգինի, թողէք նմա։
18 Պոռնկեցան պոռնկութեամբ, սիրեցին
զանարգութիւն ի հպարտութենէ նորա։
19 Մրրիկ հողմոյ շնչեսցէ ի թեւս նորա,
եւ ամաչեսցեն ի սեղանոց՝՝ իւրեանց։

## ԳԼ. Ե

1 Լուարուք զայս, քահանայք, եւ ան-
սացէք, տունդ Իսրայելի. եւ տուն
թագաւորիդ, ունկնդիր լերուք. քանզի
ընդ ձեզ է դատաստան. զի որոգայթ
եղերուք [10]դիտանոցին, եւ իբրեւ զվարմ
2 ձգեալ [11]ի գլուխ գահաւանդի, Զոր որ-
սորդք յորս հաստատեցին. ես եմ խրա-
3 տիչ ձեր՝՝։ Ես ծանեայ զԵփրեմ, եւ
Իսրայէլ ոչ է ի բացեայ յինէն. քանզի
այժմ պոռնկեցաւ Եփրեմ, եւ պղծեցաւ
4 Իսրայէլ։ Ոչ ետուն զխորհուրդս իւր-
եանց դառնալ առ Աստուած իւրեանց.
զի այս պոռնկութեան է ի նոսա, եւ
5 զՏէր ոչ ծանեան։ Եւ խոնարհեսցի
հպարտութիւն Իսրայելի յերեսս նորա.

---

[1] Եբր. բազմացան [2] Եբր. որ բնակէն ի նմա. գազանօք անապատի [3] Եբր Ա.յլ [4] Եբր. զի ժողովուրդ քո իբրեւ զհակառակօղս է ընդ քահանային։ (5) Արդ դու գլորեցիս ի տուէ. եւ գլորեսցի մարգարէն ընդ քեզ ի գիշերի, եւ ես ջնջեցից զմայրն քո։

(6) Ջնջեցաւ ժողովուրդ իմ առ ի չգոյէ գիտութեան [5] Եբր. Զվասն մեղացն ժողովրդեան իմոյ ուտեն, եւ ի վերայ անօրէնութեան նոցա դնեն [6] Եբր. պոռնկեցին, և մի՛ բազմացին, զի զՏէր թողին զի մի՛ զգուշասցին։

(11) Պոռնկութիւն եւ գինի եւ քաղցու առնուն զսիրտ։ (12) Ժողովուրդ իմ հարցանէ զփայտ իւր, և գաւազան նորա պատմէ նմա. զի

[7] Եբր. խունկս արկանէին [8] Եբր. որ ոչ իմանայ՝ կործանեսցի։ (15) Եթէ դու շնասցես, Իսրայէլ, մի՛ լիցի յանցաւոր Յուդա. [*] Եբր. երինջ կամակոր [9] Եբր. Թող զնա։ (18) Եղծան խնջոյք նոցա, պոռնկեցան պոռնկութեամբ. սիրեցին, տուէք, Տուէք այսր. ամօ՛թ իշխանաց նորա։ (19) Կապեաց ողի զնա ի թեւս իւր, եւ ամաչեսցեն ի զոհից [10] Եբր. ի Մասփա [11] Եբր. ի Թաբոր։ (2) Եւ մոլորեալք յաճախեցին զզենումն, թէպէտեւ ես էի խրատու ամենեցուն նոցա

եւ Իսրայէլ եւ Եփրեմ [1]տկարասցին
յանօրէնութիւնս իւրեանց, [2]տկարասցի
6 եւ Յուդա ընդ նոսա։ [3]Յարձիւք եւ
պատարագօք՟ խնդրեսցեն խնդրել զՏէր,
եւ մի՛ գտցեն զնա, զի խոյս ետ ի նո-
7 ցանէ. Զի զՏէր թողին, քանզի որդիք
օտարք ծնան նոցա. արդ այժմ կերիցէ
զնոսա [4]երեւի եւ զվիճակս՟ նոցա։
8 Փող հարէք [5]ի վերայ բլրոց, գոչեցէք
ի վերայ բարձանց. քարոզ կարդացէք
ի տուն Ովնայ, թէ Յիմարեցաւ Բենիա-
9 մին, Եւ Եփրեմ՟ եղեւ յապականու-
թիւն յաւուրս յանդիմանութեան. ի մէջ
ազգաց Իսրայելի ցուցի [6]զհաւատար-
10 մութիւնս։ Եղեն իշխանք Յուդայ՝ որ-
պէս որ փոփոխեն զսահմանս. ի վերայ
նոցա հեղից իբրեւ զջուր [7]զասպատակ
11 իմ։ Զրկեաց Եփրեմ զոսոխ իւր, եւ
կոխեաց զիրաւունս. զի սկսաւ երթալ
12 զհետ ունայնեաց։ Եւ ես իբրեւ զխռով
եղէց Եփրեմի, եւ իբրեւ զխայթոց՟
13 տանն Յուդայ։ Ետես Եփրեմ զախտ
իւր, եւ Յուդա զցաւս իւր, եւ գնաց
Եփրեմ առ Ասորեստանեայս, եւ առա-
քեաց հրեշտակս առ արքայն Յարիմայ.
եւ նա ոչ կարաց փրկել զձեզ, եւ ոչ
14 հանգուցանել զձեզ ի ցաւոց։ Զի ես եմ
իբրեւ [8]զյովազ ի վերայ Եփրեմի, եւ
իբրեւ [9]զառեւծ ի վերայ տանն Յուդայ.
եւ յարձակեցայց եւ յափշտակեցից զնո-
սա. առից՟, եւ ոչ ոք իցէ որ փրկիցէ։
15 Գնացից եւ դարձայց ի տեղի իմ, մին-
չեւ [10]ապականեսցին, եւ խնդրեսցեն
զերեսս իմ. ի նեղութեան իւրեանց
կանխեսցեն առ իս։

## Գլ. Զ

1 [11]Եւ ասասցեն, Դարձցուք եւ երթի-
ցուք առ Տէր Աստուած մեր՟, զի նա
եհար զմեզ, եւ նոյն բժշկեսցէ. վիրա-
2 ւորեաց, եւ պատեսցէ զմեզ. Եւ ող-
ջացուսցէ զմեզ յետ երկուց աւուրց,
եւ յաւուրն երրորդի [12]յարիցուք եւ
3 կեցցուք առաջի նորա. Եւ ծանիցուք
եւ զհետ երթիցուք ճանաչել զՏէր իբ-
րեւ զառաւօտ պատրաստական [13]գտցուք
զնա՟, եւ եկեսցէ մեզ իբրեւ [14]զանձրեւ
կանուխ եւ զանագան յերկրի՟։
4 Զի՞նչ արարից ընդ քեզ, Եփրեմ, [15]եւ
կամ զի՞նչ անցուցից՟ ընդ քեզ, Յու-
դա. զի ողորմութիւն ձեր իբրեւ զամպ
վաղորդայնի, եւ իբրեւ զցօղ առաւօ-
5 տու որ անցանէ։ Վասն այնորիկ [16]հըն-
ձեցի զմարգարէս ձեր՟, եւ կոտորեցի
զնոսա բանիւ բերանոյ իմոյ. եւ իրա-
6 ւունք քո իբրեւ զլոյս ծագեսցեն։ Զի
զողորմութիւն կամիմ, եւ ոչ զպատա-
րագ, եւ զգիտութիւն Աստուծոյ՝ քան
7 զողջակէզս։ Եւ նոքա եղեն իբրեւ
[17]զմարդ ոք՟ որ անցանէ զուխտիւ.
8 անդ [18]արհամարհեաց զիս Գաղաադ, Քա-
ղաք որ առնէ ունայնս, եւ խռովէ զջուրս։
9 Եւ զօրութիւն քո իբրեւ զառն աւա-
զակի. թաքուցին քահանայք զճանա-
պարհ. սպանին զՍիկիմ՟, զի զանօրէ-
10 նութիւն գործեցին։ Ի տանն Իսրայելի
տեսի զարհաւիրս. անդ պոռնկեցաւ
11 Եփրեմ, եւ պղծեցաւ Իսրայէլ. [19]Եւ
Յուդա սկիզբն արար կթոց՟, ի դար-
ձուցանել ինձ զգերութիւն ժողովր-
դեան իմոյ։

## Գլ. Է

1 Ի բժշկել ինձ զԻսրայէլ եւ [20]յայտնեսցին չարիքն Եփրեմայ եւ չարիքն Շամրնի,
զի արարին ստութիւն. գող մտցէ առ
նա, եւ աւազակ մերկացուսցէ ի ճա-
2 նապարհս նորա։ [21]Զի մրմնջեսցեն ի
միասին, որպէս մրմնջեն ի սիրտս իւր-
եանց՟ զամենայն չարիս նոցա յիշեցի.
արդ պաշարեցին զնոսա խորհուրդք նո-
ցա, յանդիման երեսաց իմոց եղեն։
3 Զարեօք իւրեանց ուրախ արարին զթա-

[1]Եբր. գլորեսցին [2]Եբր. գլորեսցի [3]Եբր. Խաշամբք եւ արջառովք իւրեանց [4]Եբր. ամիս՝ հանդերձ վիճակօք [5]Եբր. ի Գաբաա, շեփոր՝ ի Ռամա. գոչեցէ՛ք ի Բեթաւան. զկնի քո, Բենիամին։ (9) Եփրեմ [6]Եբր զճշմարիտն [7]Եբր. զցասումն իմ։ (11) Զրկեցաւ Եփրեմ, բեկաւ դատաստանաւ, կամեցաւ, չոգաւ զհետ հրամանի։ (12) Եւ ես եղէց իբրեւ ցեց Եփրեմայ, եւ իբրեւ զերր [8]Եբր. զառեւծ [9]Եբր. զկորիւն առիւծու ի վերայ տանն Յուդայ. ես, ես պատառեցից եւ երթայց, տարայց [10]Եբր. ապաշաւեսցեն [11]Եբր. Եկայք եւ դարձցուք առ Տէր

[12]Եբր. յարուսցէ զմեզ [13]Եբր. է ելք նորա [14]Եբր. զանձրեւ, իբրեւ զանձրեւ որ ոռոգէ զերկիր [15]Եբր. զի՞նչ արարից [16]Եբր. կոփեցի մարգարէիւք [17]Եւս. զԱդամ [18]Եբր. անօրինեցան յիս։ (8) Գաղաադ՝ քաղաք որոց գործեն զանօրէնութիւն, շաղախեալ արեամբ։ (9) Եւ որպէս դարանի առն գունդ աւազակաց, ընդէ խումբ քահանայից սպանանեն առ ճանապարհաւ Սիւքեմայ [19]Եբր. Քեզ եւս, Յուդա, առհմնեալ է հունձ [20]Եբր. յայտնեցան [21]Եբր. Եւ ոչ խորհին ի սիրտս իւրեանց թէ ես

զաւուրն, եւ ստութեամբք իւրեանց
4 զիշխանս։ Ամենեքին շնացեալք, իբրեւ
զթոնիր վառեալ [1]յեփել, բորբոքեալ ի
բոցոյ եւ ի զանգուածոյ ճարպոյ մին-
5 չեւ խմորեսցի նոյն։ Աւուրք թագա-
ւորաց ձերոց, սկսան իշխանք զայրա-
նալ ի գինւոյ, եւ ձգեցին զձեռս իւր-
6 եանց ընդ ժանտագործս։ Զի բորբոքե-
ցան իբրեւ զհնոց սիրտք նոցա յանկ-
ծանել զնոսա. զգիշերն ամենայն քնով
յագեցաւ Եփրեմ. եղեւ առաւօտ, եւ
7 բորբոքեցան՝՝ իբրեւ զբոց հրոյ։ Ամե-
նեքին ջեռան իբրեւ [2]զհնոց վառեալ,
եւ հուր եկեր՝՝ զդատաւորս նոցա.
ամենայն թագաւորք նոցա անկան, եւ
ոչ ոք էր ի նոցանէ որ կարդայր առ իս։
8 Եփրեմ ընդ ժողովուրդս խառնակէր,
եւ եղեւ Եփրեմ նկան չդարձուցեալ։
9 Կերան օտարք զզօրութիւն նորա, եւ
նա ոչ գիտաց. ծաղկեցին ալիք նորա,
10 եւ նա ոչ զգաց։ Եւ [3]խոնարհեսցի հը-
պարտութիւնն Իսրայելի յերեսս նորա.
եւ ոչ դարձան առ Տէր Աստուած իւր-
եանց, եւ ոչ խնդրեցին զնա յամենայնի
11 յայսմիկ։ Եւ էր Եփրեմ իբրեւ զաղաւնի
անմիտ՝ որոյ ոչ իցէ սիրտ. յԵգիպտոս
խրախուէին, եւ առ Ասորեստանեայս
12 գնացին։ [4]Ուր եւ՝՝ երթիցեն՝ արկից ի
վերայ նոցա զվարմ իմ, եւ իբրեւ
զթռչունս երկնից իջուցից զնոսա. եւ
խրատեցից զնոսա [5]համբաւ ով նեղու-
թեան՝՝ նոցա։
13 Վա՜յ նոցա, զի վաղեցին զինեւ. եւ
եղուկ են, զի ամպարշտեցան յիս. ես
փրկեցի զնոսա եւ նոքա բամբասեցին
14 զիս սուտ. Եւ ոչ աղաղակեցին առ իս
սիրտք նոցա, այլ ողբային յանկողինս
իւրեանց. եւ ի վերայ ցորենոյ եւ գինւոյ
15 [6]ցտէին. խրատեցան ինեւ։ Եւ ես՝՝ զօ-
րացուցի զբազուկս նոցա, եւ ի վերայ
16 իմ խորհեցան [7]չարութիւն։ Դարձան
յոչինչ. եւ եղեն իբրեւ զաղեղն լար-
եալ՝՝. անկցին ի սուր իշխանք նոցա,
վասն անխրատութեան խստութեան
լեզուի իւրեանց. զի այս [8]անզգամու-
թիւն նոցա յերկրին Եգիպտացւոց։

## Գլ. Ը

1 [9]Ի ծոց նոցա իբրեւ զերկիր, եւ՝՝ իբրեւ
զարծուի ի վերայ տանն Տեառն, փո-
խանակ զի անցին զուխտիւ իմով, եւ
2 յօրէնս իմ ամպարշտեցան։ Առ իս ա-
ղաղակեսցեն, Աստուած, ծանեաք [10]զքեզ։
3 Զի Իսրայէլ դարձաւ ի բարեաց. հալա-
4 ծեցին զթշնամի։ Անձամբ թագաւորե-
ցին, եւ ոչ ինեւ. տիրեցին, եւ ոչ ցու-
ցին ինձ. զարծաթ իւրեանց եւ զոսկի ա-
րարին իւրեանց կուռս, զի սատակեսցին։
5 Խորտակեա զորթն՝՝ քո, Շամրին. բոր-
բոքեցաւ սրտմտութիւն իմ ի վերայ նոցա.
մինչեւ յե՞րբ ոչ կարասցեն [11]սրբել յԻսրա-
6 յէլի։ Եւ՝՝ զայն հիւսն գործեաց, եւ ոչ Աս-
տուած. քանզի [12]մոլորեցուցիչ է՝՝ որթն
7 քո, Շամրին։ Զի [13]խորշակահար սեր-
մանեցին, եւ կործանումն նոցա ընկալ-
ցի զայն՝՝. որոյ նոցա ոչ արասցէ զօրու-
թիւն խիւսոյ. թէ եւ առնիցէ՝ զայն
8 օտարք կերիցեն։ Ընկղմեցաւ Իսրայէլ.
արդ այժմ եղեւ ի մէջ ազգաց իբրեւ
9 զանօթ անպիտան։ Զի գնացին առ [14]Ա-
սորեստանեայս. զուարթացաւ առան-
10 ձինն Եփրեմ, սիրեաց զկաշառս։ Վասն
այնորիկ մատնեսցին ի մէջ ազգաց.
բայց այժմ ընկալայց զնոսա, եւ դա-
դարեսցեն փոքր մի յօծանելոյ թագա-
11 ւորս եւ իշխանս։ Զի յաճախեաց Եփ-

---

[1] Եբր. ի հացարարէ. դադարեսցի ի բորբոքելոյ ի թրել զզանգուածն մինչեւ ի խմորել նորա։ (5) Յաւուր թագաւորին մերոյ խօթացան (կամ, տուն խօթանալ) իշխանք տապով ի գինւոյ. ձգեաց զձեռն իւր ընդ կատակիչս։ (6) Զի կազմեցին զսիրտ իւրեանց իբրեւ զթոնիր ի դարանել իւրեանց. զգիշերն ամենայն ի քուն էր որ եփէրն նոցա. ընդ առաւօտն բորբոքեցաւ
[2] Եբր. զթոնիր, և կերան [3] Եբր. խոնարհեցաւ, կամ, վկայեաց [4] Կամ, Յորժամ [5] Եբր. որպէս համբաւեցաւ ի ժողովս [6] Եբր. խմբեցան. յետս կացին յինէն։ (15) Թէպէտեւ ես խրատեցի զնոսա,

[7] Եբր. չարութիւն (կամ, համարեցան ինձ ի չարութիւն)։ (16) Դառնան, ոչ առ Բարձրեալն. եղեն իբրեւ զաղեղն նենգութեան [8] Եբր. եղիցի նախատինք [9] Եբր. Դիր զփողն ի բերան քո. Թշնամին [10] Եբր. զքեզ. առէ Իսրայէլ։ (3) Իսրայէլ մերժեաց զբարին. թշնամի հալածեսցէ զնա։ (4) Թագաւորեցուցին նոքա, եւ ոչ ինեւ. կարգեցին իշխան, և ոչ գիտացի. արծաթով իւրեանց և ոսկւով իւրեանց արարին իւրեանց կուռս. զի սատակեսցին։
(5) Մերժեցաւ որթ [11] Եբր. սրբել։ (6) Քանզի յԻսրայելէ եւ այս. [12] Եբր. եղիցի ջախջախեալ [13] Եբր. հողմն սերմանեցին, եւ մրրիկ հնձեսցեն [14] Եբր. Ասորեստանեայս իբրեւ զցի՛ռ մենակեաց առանձին. Եփրեմ կալաւ տարփանս ի վարձու։ (10) Թէ եւ կայցին վարձու յազգաց, արդ ժողովեցից զնոսա. եւ՝ կրեսցեն վիշտ սակաւիկ մի ի բեռանէ թագաւորին իշխանաց։ (11) Զի յա-

բեմ սեղանս. եւ եղեն նմա ի մեղս
12 սեղանքն սիրեցեալք։ Գրեցից ի վերայ
նոցա բազմութիւն, եւ կրօնք նոցա
13 յօտարոտիս համարեցան։ Սեղանքն սի-
րեցեալք. զի թէպէտ եւ զոհեսցեն զոհս
եւ ուտիցեն զմիս, Տէր ոչ ընկալցի
զայն". արդ յիշեսցէ զանիրաւութիւնս
նոցա, եւ զանօրէնութեանց նոցա վրէժ
խնդրեսցէ. նոքա յԵգիպտոս դարձան
[1]եւ ի մէջ Ասորեստանեայց պղծութիւնս
14 կերիցեն"։ Զի մոռացաւ Իսրայէլ զԱ-
րարիչ իւր, եւ շինեցին մեհեանս, եւ
յաճախեաց Յուդա քաղաքս պարսպա-
ւորս. եւ առաքեցից հուր ի քաղաքս
նորա, եւ կերիցէ [2]զհիմունս նոցա"։

ԳԼ. Թ

1 Մի՛ խնդար, Իսրայէլ, եւ մի՛ ուրախ
լինիր որպէս ժողովուրդք երկրի. զի
պոռնկեցար յԱստուծոյն քումմէ, սիրե-
ցեր զկաշառս ի վերայ ամենայն կա-
2 լոց ցորենոյ։ Կալք եւ հնձանք զնոսա
ոչ [3]ծանեան, եւ [4]գինի ստեաց նոցա։
3 Ոչ բնակեսցեն յերկրի Տեառն. [5]բնա-
կեսցէ Եփրեմ յԵգիպտոս, եւ ի մէջ Ա-
4 սորեստանեայց պիղծս կերիցեն։ Ոչ
նուիրեցին Տեառն գինի, եւ ոչ քաղց-
րացուցին նմա. զոհք նոցա իբրեւ զհաց
սգոյ եղիցին նոցա, ամենեքեան որ ուտիցեն
ի նմանէ՝ պղծեսցին. զի հացն իւրեանց
անձանց իւրեանց լիցի, եւ մի՛ մտցէ ի
5 տուն Տեառն։ Զի՞նչ գործիցէք յաւուրս
տարեկանի եւ յաւուրս տօնի Տեառն։
6 Վասն այնորիկ ահա գնասցեն [6]ի թըշ-
ուառութիւն Եգիպտացւոց. եւ ընկալցի
զնոսա Մեմփիս, եւ թաղեսցէ զնոսա
Մաքմաս. զարծաթ նոցա կորուստ"
ժառանգեսցէ, եւ ի յարկս նոցա փուշ
7 բուսցի։ Հասին են աւուրք վրէժխընդ-
րութեան քո, հասին են աւուրք հա-
տուցման քո. [7]եւ չարչարեսցի Իսրայէլ
իբրեւ զմարգարէ յիմարեալ, իբրեւ զայր
մի այսահար. ի բազմութենէ անիրա-
ւութեանց քոց յաճախեաց մոլորութիւն։
8 Դէտ է Եփրեմ ընդ Աստուծոյ, մարգարէ
որոգայթ գայթակղութեան յամենայն
ճանապարհս նորա. մոլորութիւն ի տան
9 Աստուծոյ անկեցին։ Ապականեցան ըստ
աւուրցն բարձանց". յիշեսցէ զանօրէ-
նութիւնս նոցա, եւ վրէժ խնդրեսցէ
մեղաց նոցա։
10 Իբրեւ զխաղող յանապատի գտի զԻս-
րայէլ, եւ իբրեւ [8]զպտուղ ի թզենւոջ
վաղահասուկ տեսի զհարս [9]նոցա. նոքա
մտին ի Բեեղփեգովր, եւ [10]օտարացան
յամօթ իւրեանց. եւ եղեն զարշելիքն
11 իբրեւ զսիրեցեալս։ Եփրեմ իբրեւ զհաւ
թռեաւ. եւ փառք նոցա ի տոկոսեաց
12 եւ յերկանց եւ յյղութեանց"։ Թէպէտ
եւ սնուսցեն զորդիս իւրեանց, [11]անզա-
ւակեսցին ի մարդկանէ. քանզի վայ է
13 [12]նոցա՝ մարմին իմ ի նոցանէ։ Զեփրեմ
որպէս տեսի՝ յորս կացուցին յանդիման
զորդիս իւրեանց. եւ սկսաւ Եփրեմ
14 հանել ի խողխողումն զորդիս իւր"։ Տուր
նոցա, Տէր. զի՞նչ տացես նոցա.
տուր նոցա արգանդ անորդի եւ ստինս
15 ցամաքեալս։ Ամենայն չարիք նոցա ի
Գաղգաղա. զի անդ ատեցի զնոսա.
վասն չարութեան գնացից նոցա ի
տանէ իմմէ մերժեցից զնոսա, եւ ոչ
եւս յաւելից սիրել զնոսա. ամենայն
16 իշխանք նոցա ապստամբք։ [13]Ախտացան
արմատք Եփրեմայ, չորացան" եւ պը-
տուղ ոչ եւս տացեն. զի թէպէտ եւ
ծնցին՝ անզաւակեցից զցանկալիս որո-
վայնից նոցա։
17 Մերժեսցէ զնոսա [14]Աստուած, զի ոչ
լուան նմա. եւ եղիցին մոլորականք ի
մէջ ազգաց։

ճախեաց Եփրեմ սեղանս ի մեղս, եղեն նմա սեղանքն ի մեղանչել։ (12) Գրեցի նմա զմեծամեծս օրինաց իմոց. իբրեւ օտարոտի համարեցան։ (13) Եւ ի զոհս ընծայից իմոց զոհեն միս եւ ուտեն. Տէր ոչ հաճեցաւ ընդ նոսա

[1] Յեբր. դարձան [2] Եբր. զապարանս նորա [3] Եբր. կերակրեն [4] Կամ, խաղողուտն [5] Եբր. դարձցի [6] Եբր. ի թշուառութենէ. Եգիպտոս ժողովեսցէ զնոսա. եւ թաղեսցէ զնոսա Մեմփիս. զցանկալիս արծաթոյ նոցա եղինճ [7] Եբր. Իսրայէլ գիտասցէ. յիմարեցաւ մարգարէն, մոլեգնեցաւ այրն հոգեւոր վասն բազմութեան անիրաւութեան քո եւ վասն յաճախութեան ատելութեան։ (8) Դէտ ակն ունի Եփրեմ յԱստուած իմ. մարգարէն՝ որոգայթ որսորդի յամենայն ճանապարհս իւր, պատճառ հակառակութեան ի տան Աստուծոյ իւրոյ։ (9) Զաւածան, ապականեցան ըստ աւուրցն Գաբաայի [8] Եբր. զպտուղ [9] Եբր. ձեր [10] Եբր. նուիրեցին զանձինս ամօթոյ, և եղեն զարշելիք իբրեւ զոր սիրեցին։ (11) Եւ Եփրեմ՝ իբրեւ զհաւ թռեաւ փառք նորա յերկանց, յարգանդէ եւ ի յղութենէ [11] Եբր. անզաւակեցից զնոսա [12] Եբր. նոցա ի զատչել իմում ի նոցանէ։ (13) Եփրեմ, որպէս տեսի ի Տիւր, տնկեալ էր ի շէն տեղւոջ. բայց Եփրեմ հանցէ զորդիս իւր սպանողին [13] Եբր. Հարաւ Եփրեմ. չորացաւ արմատ նոցա [14] Եբր. Աստուած իմ

## Գլ. Ժ

1 Այգի տաշտաւոր [1]պտղալից Իսրայէլ"․
ըստ բազմութեան պտղոց իւրոց յա-
ճախեաց սեղանս, ըստ [2]պարարտու-
թեան երկրի իւրեանց կանգնեցին ար-
2 ձանս։ Բաժանեցին զսիրտս իւրեանց,
արդ ապականեսցին․ նա կործանեսցէ
զսեղանս նոցա, թշուառասցին արձանք
3 նոցա"։ Քանզի այժմ ասասցեն, Ոչ գոյ
մեր թագաւոր, զի ի Տեառնէ ոչ երկ-
եաք․ այլ թագաւոր մեզ զի՞ առնիցէ։
4 [3]Եթէ բանս խօսեսցի, պատճառք ստու-
թեան են․ ուխտեսցէ ուխտ․ եւ բուս-
ցին իբրեւ զսէզ իրաւունք ի կորդ ա-
5 գարակի․ որթուն տանն Ովնայ։ Եւ ե-
ղիցին պանդուխտք" բնակիչք Շամրնի․
զի սուգ առ ժողովուրդ նորա ի վերայ
նորա․ եւ [4]որպէս դառնացուցին զնա,
տանհար լիցին" ի վերայ փառաց նորա․
6 զի գերեցան ի նմանէ։ [5]Եւ զնա յԱ-
սորեստանեայս կապեալս տարցին պա-
տարագ արքային Յարիմայ․ կաշառօք
ընկալցի զԵփրեմ․" ամաչեսցէ Իսրայէլ
7 ի խորհուրդս իւր։ [6]Մերժեաց Շամրին
զթագաւոր իւր՝ իբրեւ զխախ յերեսաց"
8 ջրոյ։ Եւ բարձցին մեհեանքն Ովնայ՝
մեղքն Իսրայելի․ փուշ եւ տատասկ
բուսցի ի սեղանս նոցա․ եւ ասասցեն
լերանց՝ թէ Անկերուք ի վերայ մեր,
եւ բլրոց՝ թէ Ծածկեցէք զմեզ։
9 [7]Յորմէհետէ բարձունք են՝ մեղաւ" Իս-
րայէլ․ անդ առին զանգի, եւ մի՛ հասցէ
նոցա [8]ի բարձունս․ պատերազմ եկն ի վե-
10 րայ որդւոցն անօրէնութեանց՝ Խրատել"
զնոսա, եւ ժողովեսցին ի վերայ նոցա
ազգք՝ [9]խրատել զնոսա" ի վերայ երկուց
11 անիրաւութեանց նոցա։ Եփրեմ երինջ
կիրթ՝ սիրել զհակառակութիւն․ բայց
ես հասից ի վերայ գեղոյ պարանոցի
նորա․ ելից ի վերայ Եփրեմայ, եւ
անփոյթ արարից զՅուդայ․ եւ զօ-
րասցի ի վերայ նորա" Յակոբ։
12 Սերմանեցէք ձեզ յարդարութիւն, եւ
հնձեցէք [10]պտուղ կենաց․ լուսաւոր ա-
րարէք ձեզ զլոյս գիտութեան․ խնդրե-
ցէք զՏէր՝ մինչեւ եկեսցեն ձեզ ար-
13 դիւնք արդարութեան։ Զմէ՞ խլեցէք
զամպարշտութիւն, եւ զանօրէնութիւնս
նորա գրգեցէք", եւ կերայք պտուղ
ստութեան․ զի յուսացար [11]ի կառս քո,
14 ի բազմութիւն զօրութեան քո։ Եւ
յարիցէ [12]կորուստ ի վերայ ժողովրդեան"
քո, եւ ամենայն պարսպաւորք քո
կործանեսցին․ [13]իբրեւ իշխան Սաղմանա
ի տանէն Յերոբովաղայ յաւուր պա-
տերազմին, զմայր առ որդիս հարին,
15 Նոյնպէս արասցեն ձեզ, տունդ Իսրայելի,
յերեսաց չարեաց ձերոց․ ընկեցան ընդ ա-
ռաւօտս, ընկեցաւ" թագաւորն Իսրայելի։

## Գլ. ԺԱ

1 [14]Քանզի տղայ էր Իսրայէլ, եւ ես սի-
րեցի զնա, եւ յԵգիպտոսէ կոչեցի զոր-
2 դի իմ։ [15]Որպէս կոչեցի զնոսա՝ նոյն-
պէս մերժեցան յերեսաց իմոց"․ նոքա
Բահաղիմայ զոհէին եւ դրօշելոց խունկս
3 արկանէին։ Եւ ես [16]խափանեցի զԵփրեմ",
եւ ընկալայ զնա ի վերայ բազկաց իմոց․
եւ ոչ գիտացին թէ բժշկեմ զնոսա։
4 [17]Յապականութենէ մարդկան ձգեցի
զնոսա, կապանօք [18]սիրոյ իմոյ․ եւ եղէ
նոցա որպէս որ ածիցէ օք ապտակ ի
ծնօտս նորա․ հայեցայց ի նա՝ եւ յաղ-

---

[1] Եբր. է Իսրայէլ, որ բերէ զիւր պտուղ [2] Եբր. գեղեցկութեան երկրի իւրոյ գեղեցկացոյց արձանս։ (2) Պատիր է սիրտ նոցա, արդ յանցաւոր լիցին․ Նա կործանեսցէ զսեղանս նոցա, աւերեսցէ զկոթողս նոցա։ [3] Եբր. Խօսին անոտիս երդուեալ սուտ յուխտել ուխտս․ եւ բուսցին իբրեւ զդառնիճ իրաւունք յակօսս ագարակի։ (5) Յաղագս որթուցն Բեթաւենայ երկիցեն [4] Եբր. քուրմք նորա սարսին [5] Եբր. Նա եւս յԱսորեստանեայս տարցի՝ պատարագ արքային Յարեբայ․ յամօթ լիցի Եփրեմ, և [6] Եբր. Հատաւ Շամրին, թագաւոր նորա որպէս փրփուր յերեսս [7] Եբր. Յաւուրց անտի Գաբաայ մեղար, [8] Եբր. պատերազմ ընդդէմ որդւոցն անիրաւութեան ի Գաբաա։ (10) Ի ցանկալ իմում խրատեցից [9] Եբր. ի կապել նոցա ընդ երկուս անիրաւութիւնս իւրեանց։ (11) Եփրեմ երինջ կիրթ, և սիրէ կոխատել ցորեան, այլ ես անցուցի լուծ ի գեղ պարանոցի նորա. արարից զԵփրեմ անդրուար, հերկս հարցէ Յուդա, տափեսցէ նմա [10] Եբր. յողորմութիւն, հարէք ձեզ հերկս, զի ժամանակ է խնդրելոյ զՏէր, մինչեւ եկեսցէ եւ ուսուսցէ (կամ, տեղասցէ) ձեզ զարդարութիւն։ (13) Հերկեցէք զամպարշտութիւն, հնձեցէք զանիրաւութիւն [11] Եբր. ի ճանապարհս [12] Եբր. աղմուկ ի ժողովուրդս [13] Եբր. որպէս կործանեաց Սաղման զԲեթարբել յաւուր պատերազմին․ մայր ընդ որդւոց հարաւ զգետնի․ (15) Նոյնպէս արասցէ ձեզ Բեթէլ վասն մեծի չարութեան ձերոյ․ այգուն ի սպառ հատցի [14] Կամ, Յորժամ [15] Եբր. Կոչեցին առ նոսա, այլ նոքա մեկնեցան յերեսաց նոցա [16] Եբր. ուսուցի Եփրեմայ գնալ [17] Եբր. Ջուանօք [18] Եբր. սիրոյ․ եւ եղէ նոցա որպէս որ բառնայ զլուծ ի պարանոցէ նոցա և կե-

5 թեցից նմա։ Բնակեաց Եփրեմ յԵգիպ-
տոս", եւ Ասորեստանեայն՝ թագաւոր
6 նմա. զի ոչ կամեցան դառնալ։ [1]Եւ
տկարացաւ սրով ի քաղաքս իւր, եւ
դադարեաց ի ձեռս նորա, եւ կերիցեն
7 ի խորհրդոց իւրեանց։ Եւ ժողովուրդ
նորա կախեալ կայցէ զբնակութենէ
նորա. եւ Աստուած ի վերայ պատուա-
կանաց նորա բարկասցի, եւ մի՛ բարձ-
8 րացուսցէ զնոսա։ Զի՞նչ անցուցից ընդ
քեզ, Եփրեմ. այլ պաշտպան լինիցիմ
քեզ, Իսրայէլ. զի՞նչ անցուցից ընդ քեզ.
եդից զքեզ իբրեւ զԱդամա եւ իբրեւ
զՍեբոյիմ. դարձաւ սիրտ իմ ի նոյն,
9 յուզեցան խնամք" իմ։ Ոչ արա-
րից ըստ բարկութեան սրտմտութեան
իմոյ, եւ ոչ [2]թողից ջնջել զԵփրեմ.
զի Աստուած եմ ես, եւ ոչ մարդ. ի
միջի ձերում Սուրբ, եւ ոչ մտից *ի
10 քաղաքս. Այլ զհետ Տեառն [3]գնացից.
իբրեւ առեւծ մռնչեսցէ, [4]զի ինքն
մռնչեսցէ, եւ յիմարեսցուսցէ զորդիս
11 ջրոց։ Թռիցեն եկեսցեն" իբրեւ զհաւ
յԵգիպտոսէ, եւ իբրեւ զաղաւնիս յերկ-
րէն Ասորեստանեայց. եւ պատսպա-
րեցուցից զնոսա ի տունս իւրեանց, ասէ
12 Տէր։ Պաշարեաց զիս ստութեամբ Եփ-
րեմ, եւ ամպարշտութեամբ տունն
[5]Իսրայէլի եւ Յուդայ, արդ ծանեաւ
զնոսա Աստուած, եւ ժողովուրդ սուրբ
կոչեսցի Աստուծոյ"։

ԳԼ. ԺԲ

1 [6]Այլ Եփրեմ այս չար", զհետ եղեւ
խորշակի. զօրհանապազ զնանրութիւն
եւ զանօտիս յաճախեաց. եդ ուխտ ընդ
Ասորեստանեայս, եւ եւղ յԵգիպտոս

2 տանէր։ Եւ դատաստան Տեառն ընդ
Յուդայ, եւ խնդրել վրէժ ի Յակոբայ
ըստ ճանապարհաց նորա, եւ ըստ զը-
3 նացից նորա հատուսցէ նմա։ Յարգանդի
[7]խաբեաց զեղբայր իւր, եւ յաշխատու-
թիւնս իւր զօրացաւ առ Աստուած"։
4 Եւ ժուժկալեաց ընդ հրեշտակին եւ
զօրացաւ. [8]լացին եւ խնդրեցին զիս, եւ
ի տան իմում գտին զիս. անդ պատ-
5 մեցաւ նոցա. Եւ Տէր Աստուած ամե-
6 նակալ եղիցի յիշատակ նոցա"։ Եւ դու
յԱստուած քո դարձցիս, ողորմութիւն
եւ իրաւունս պահեսցես, եւ [9]մերձես-
ցիս առ Տէր" Աստուած քո յամենայն
7 ժամ։ [10]Կչիռ անիրաւութեան ի ձեռս
[11]Քանանու, եւ սիրեաց յաղթահարել։
8 Եւ ասաց Եփրեմ, [12]Մեծացայ, գտի
հանգիստ անձին իմոյ. ամենայն վաս-
տակք նորա մի՛ գտցին նմա, զի վասն
9 անօրէնութեանց յանցեաւ։ Բայց ես
Տէր Աստուած քո որ հանի զքեզ" յերկ-
րէն Եգիպտացւոց, դարձեալ բնակե-
ցուցից զքեզ ի խորանս՝ ըստ աւուրցն
10 տօնից. Եւ խօսեցայ ընդ մարգարէսն
եւ ես տեսիլս յաճախեցի, եւ ի ձեռն
11 մարգարէից [13]նմանեցայց։ Եթէ ոչ Գա-
ղաադ էր, ապա սուտ էին ի Գաղղա-
ղա իշխանքն որ զոհէին. եւ սեղանք
նոցա իբրեւ զկոյտս ի կորդ" ագարակի։
12 Եւ [14]գնաց Յակոբ ի դաշտն Ասորւոց,
եւ ծառայեաց Իսրայէլ վասն կնոջ,
13 եւ [15]ի ձեռն կնոջ զգուշացաւ"։ Եւ ի
ձեռն մարգարէին եհան Տէր զԻսրայէլ
յերկրէն Եգիպտացւոց, եւ մարգարէիւ
14 պահեցաւ։ Բարկացոյց [16]զիս Իսրայէլ
եւ զայրացոյց", եւ արիւն նորա ի վերայ
նորա հեղցի. զնախատինս նորա հա-
տուսցէ նմա Տէր։

---

բակրեցի զնոսա քաղցրութեամբ։ (5) Մի՛ դարձցի յերկիրն Եգիպտացւոց [1]Եբր. Եւ շողասցէ սուր ի քաղաքս նորա, եւ ծախեսցէ զնիգս նորա. և կերիցէ զնոսա վասն խորհրդոց նոցա։ (7) Եւ ժողովուրդ իմ յօժար է յետս կալ յինէն. թէեւ առ Բարձրեալն կոչեն զնոսա, սա-կայն նոքա ոչ կամին բարձրացուցանել զնա։ (8) Զիա՞րդ տաց զքեզ, Եփրեմ. մատնեցից զքեզ, Իսրայէլ. զիա՞րդ արարից զքեզ իբրեւ զԱդմա, եդից զքեզ իբրեւ զՍեբոյիմ. դարձաւ սիրտ իմ յիս. նոյնպէս յուզեցաւ գութ [2]Եբր. դարձայց [*]Կ—Լ. բարկութեամբ [3]Եբր. գնասցեն [4]Եբր. յորժամ մռնչեսցէ՝ եկեսցեն խուճապաւ որդիք յարեւմտից (Կ—Լ. ի ծովէ)։ (11) Եկեսցեն խուճապաւ [5]Եբր. Իսրայէլի. սակայն Յուդա տակաւին տիրէ ընդ Աստուծոյ, եւ ի սուրբս հաւատարիմ է [6]Եբր. Եփրեմ ճարակի հողմ

[7]Եբր. կրունկն զդարշապարէ եղբօրն, եւ ի զօրութեան իւրում մարտեաւ (Կ—Լ. ժուժկալեաց) ընդ Աստուծոյ [8]Եբր. Լացեալ եւ մաղթեաց յաղերս. ի Բեթէլ եգիտ զնա, և անդ խօսեցաւ ընդ մեզ նա։ (5) Այսինքն Տէր Աստուած զօրութեանց, Եհովայ յիշատակ նորա [9]Եբր. ակն կալցես առ [10]Եբր. Վաճառական է, կշիռք [11]Եբր. նորա [12]Եբր. Արդարեւ մեծացայ. գտի ինձ զօրութիւն. յամենայն վաստակս իմ ոչ գտցեն յիս անիրաւութիւն որ մեղք իցեն։ (9) Այլ ես Տէր Աստուած քո եմ անդստին [13]Եբր. վարեցայ նմանութեամբք։ (11) Արդարեւ Գաղաադ անիրաւ է. սոսկ ունայնութիւն են. ի Գաղգաղա զոհէին արջառս, և սեղանք նոցա իբրեւ կոյտք յակօսս [14]Եբր. փախեաւ [15]Եբր. վասն կնոջ պահ կալաւ [16]Եբր. Եփրեմ դառնութեամբ զԱստուած

## Գլ. ԺԳ

1 ¹Ըստ բանից Եփրեմայ խրատս նա
նա Աստուծոյ Իսրայէլի, եւ եդ զայն ի
2 Բահաղու՟ եւ մեռաւ։ Եւ արդ յաւել-
եալ յաւելին ի մեղանչել, եւ արարին
իւրեանց ձուլածոյս յարծաթոյ իւրեանց.
²ի նմանութիւն պատկերի կռոց, գործ
ճարտարաց՝ նուիրել նոցա. եւ նոքա
ասեն, Զոհեցէք մարդիկ, զի պակասե-
3 ցին որթք՟։ Վասն այնորիկ եղիցին իբ-
րեւ զամպ առաւօտու, եւ իբրեւ ցօղ
վաղորդայնոյ որ անցանէ, եւ իբրեւ
զփոշի հոսեալ ի կալոյ, եւ իբրեւ
4 զծուխ ³ի պատուհանից։ Ես եմ Տէր
Աստուած քո որ հաստատեցի զեր-
կինս եւ հաստատեցի զերկիր, որոյ
ձեռք հաստատեցին զամենայն զօրս
երկնից, եւ ոչ ցուցի քեզ երթալ զհետ
նոցա, եւ ես հանի զքեզ յերկրէն
Եգիպտացւոց՟. եւ Աստուած բաց յինէն
ոչ ծանիցես, եւ Փրկիչ՝ ոչ գոյ բաց
5 յինէն։ Ես ⁴հովուէի քեզ յանապատի
6 յանջրդի երկրի՟։ Ըստ արօտի նոցա յա-
գեցան եւ զմայլեցան, եւ հպարտացան
սրտիւք իւրեանց. վասն այնորիկ մո-
7 ռացան զիս։ Եւ ես եղէց նոցա իբրեւ
⁵պյուղազ, եւ իբրեւ զինձ ի ճանապար-
8 հին ⁶Ասորեստանեայց։ Պատահեցից նո-
ցա իբրեւ արջ ⁷քաղցեալ, եւ պատա-
ռեցից զառագաստ սրտից նոցա, եւ
⁸կերիցեն զնոսա կորիւնք անտառի՟,
եւ գազանք վայրի կեղեքեսցեն զնոսա
9 ⁹Ցապականութեան քում, Իսրայէլ, ո՞վ
10 իցէ որ օգնիցէ քեզ։՟ Ո՞ւր է թագա-
ւորն քո, նա փրկեսցէ զքեզ յամենայն
քաղաքս քո, ¹⁰իրաւ արասցէ քեզ՟, զորմէ
ասացերն թէ Տուր ինձ թագաւոր եւ
11 իշխան։ Ետու քեզ թագաւոր բարկու-
թեամբ իմով, եւ կարճեցի սրտմտու-
12 թեամբ իմով։ Ծրար անիրաւութեանն
Եփրեմ, ծածկեալ կան մեղքն նորա։
13 Երկունք իբրեւ ծննդականի հասցեն
նմա. դա է ¹¹որդին զի իմաստուն, վասն
այնորիկ այժմիկ չկարասցէ հանդարտել
14 ի՟ բեկման որդւոց։ Ի ձեռաց դժոխոց
ապրեցուցից զնոսա, եւ ի մահուանէ
փրկեցից զնոսա. ո՞ւր է ¹²յաղթութիւն
քո, մահ. ո՞ւր է ¹³խայթոց քո, դժոխք.
¹⁴մխիթարութիւն ծածկեալ է յաչաց իմոց։
15 ¹⁵Քանզի նա ի մէջ եղբարց զատուսցէ՟,
ածցէ ի վերայ նորա Տէր հողմ խորշա-
կի յանապատէ, եւ ցամաքեցուսցէ զե-
րակս նորա, եւ աւերեսցէ զաղբերս
նորա, ¹⁶սա ցամաքեցուսցէ զերկիր նորա
եւ զամենայն անօթս նորա ցանկալիս՟։

## Գլ. ԺԴ

1 Անպականեսցի Շամրին, զի ընդդէմ
դարձաւ Աստուծոյ իւրոյ. ի սուր անկ-
ցին, եւ սանդիմայք նոցա զքարի հար-
2 ցին, եւ յղիք նոցա պատառեսցին։ Դարձ,
Իսրայէլ, առ Տէր Աստուած քո, զի
3 տկարացար յանօրէնութիւնս քո։ Առէք
ընդ ձեզ բանս, եւ դարձարուք առ Տէր
¹⁷Աստուած ձեր՟, եւ ասացէք ցնա,
¹⁸Կարող ես թողուլ զմեղս մեր, զի մի՛
առնուցուք անիրաւութիւն, այլ ընդու-
նիցիք զբարիս՟, եւ հատուսցուք զպտ-
ուղ շրթանց մերոց ¹⁷եւ վայելեսցեն
4 ի բարութեան սիրտք ձեր՟։ Ասորես-
տանեայն ոչ փրկէ զմեզ, եւ յերիվարս
ոչ հեծցուք. եւ մի՛ եւս ասասցուք
Աստուած մեր գձեռագործս մեր. զի
որ ¹⁹ի քեզ է՝ ողորմեսցի որբոց։
5 Բժշկեցից զբնակութիւնս նոցա, եւ
սիրեցից զնոսա համօրէն՟. զի դարձաւ
6 բարկութիւն իմ ի նոցանէ։ Եղէց իբ-
րեւ ցօղ Իսրայէլի, եւ ծաղկեսցէ իբ-
րեւ շուշան, եւ արձակեսցէ զարմատ
7 իւր իբրեւ զԼիբանոս. Արձակեսցին
ոստք նորա, եւ եղիցի իբրեւ զձիթենի
²⁰պտղալից. եւ բուրեսցէ հոտ նորա

---

¹Եբր. Յորժամ խօսէր Եփրեմ՝ դողումն էր. բարձրացաւ նա ի մէջ Իսրայէլի. այլ մեղաւ Բահաղիւ, ²Եբր. ըստ հանճարոյ իւրեանց կուռս, համօրէն գործ ճարտարաց. ասեն նոքա զնոցանէ. Մարդք որ զոհեն՝ համբուրեսցեն զորթս ³Եբր. ի ծխանէ. (4) Այլ ես Տէր Աստուած քո եմ անդստին յերկրէն Եգիպտացւոց ⁴Եբր. ծանեայ զքեզ յանապատի, յերկրի պապակոյ ⁵Կամ, զառեւծ ⁶Եբր. դարանեցայց ⁷Եբր. որդեկորոյս ⁸Եբր. ծախեցից զնոսա անդ որպէս առեւծ ⁹Եբր. Ապականեցար, Իսրայէլ, այլ յիս է օգնութիւն քո (կամ, զի հակառակ եղեր ինձ՝ օգնականի քում)։ ¹⁰Եբր. եւ ո՞ւր դատաւորք քո

¹¹Եբր. որդի որ չէ իմաստուն, զի ի ժամանակին ոչ կայր ի տեղւոջ ¹²Եբր. ժանտ, կամ, սրածութիւն ¹³Եբր. աւերումն ¹⁴Եբր. ապաշաւ ¹⁵Եբր. Թէպէտեւ աճեսցէ նա ի մէջ եղբարց ¹⁶Եբր. կապտեսցէ նա զգանձս ամենայն անօթոց ցանկալեաց ¹⁷Եբր. զուարակ ¹⁸Եբր. Բարձ զամենայն անիրաւութիւն. եւ ընկալ զբարին ¹⁹Եբր. որբն է՝ գտանէ ողորմութիւն ի քեզ։ (5) Բժշկեցից զապստամբութիւն նոցա, սիրեցից զնոսա կամակար ²⁰Եբր. վայելչութիւն նորա

8 իբրեւ [1]զկնդրուկ։ Դարձցին եւ նստցին
ընդ յարկաւ նորա, կեցցեն եւ հաս-
տատեսցին ցորենով. եւ ծաղկեսցէ՝՝
իբրեւ զորթ. յիշատակ նորա իբրեւ
9 զգինի Լիբանանու եղիցի։ Եփրեմայ՝ Զի՞
եւս կայ նորա եւ կռոց, ես [2]խոնար-
հեցուցի զնա, եւ ես զօրացուցից զնա.
ես իբրեւ զայգի պտղախայծ՝՝, յինէն
գտաւ պտուղ ի քեզ։
10 Ո՞վ է իմաստուն, եւ իմասցի զայս,
հանճարեղ՝ եւ ծանիցէ զայս. զի ուղիղ
են ճանապարհք Տեառն, եւ արդարք
գնասցեն ընդ նոսա, եւ ամպարիշտք
տկարասցին ի նոսա։

[1] Եբր. զԼիբանանու (8) Դարձցին որ նստէին ընդ հովանեաւ նորա. կեցցեն իբրեւ զցորեան, եւ ծաղկեսցին [2] Եբր. լուայ զխնդրուածս նորա եւ հայեցայ ի նա. ես իբրեւ զգի դալար եմ



# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ՅՈՎԵԼԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 ՊԱՏԳԱՄ *Տեառն որ եղեւ առ Յովէլ*
2 *որդի Բաթուելի ։ Լուարուք զայս,*
*ծերք, եւ ունկն դիք, ամենայն բնակիչք*
*երկրի. եթէ եղեա՞լ է այսպիսի ինչ յա-*
*ւուրս ձեր, կամ յաւուրս հարցն ձերոց ։*
3 *Պատմեցէք զայս որդւոց ձերոց, եւ որդիք*
*ձեր որդւոց իւրեանց, եւ որդիք նոցա յազգ*
4 *յայլ ։ Զմնացորդս* [1]*թրթրոյ եկեր մարախ,*
*եւ զմնացորդս մարախոյ եկեր ջորեակ,*
*եւ զմնացորդս ջորեկի եկեր* [2]*երեւիլ ։*
5 *Սթափեցարուք, արբեալք ի գինւոյ,*
*եւ լացէք եւ ողբացարուք, ամենեքեան*
*որ ըմպէք գինի ցարբենալ. զի բար-*
*ձաւ ի բերանոյ ձերմէ ուրախութիւն*
6 *եւ խնդութիւն ։ Զի ազգ մի ել յերկիր*
*իմ հզօր եւ անթիւ. ատամունք նորա*
*ատամունք առիւծու, եւ ժանիք նորա*
7 *կորեան առիւծու ։ Արար զորթ իմ յա-*
*պականութիւն, եւ զթզենիս իմ ի խոր-*
*տակումն. յուզելով յուզեաց եւ ընկէց*
*զնա, եւ լունեցոյց զուռս նորա ։*
8 *Ողբա* [3]*առ իս իբրեւ զհարսն քրձազ-*
9 *գած ի վերայ առն իւրոյ ամուսնոյ ։ Բար-*
*ձան զոհք եւ սպանդք ի տանէ Տեառն.*
*սուգ առէք, քահանայք՝ պաշտօնեայք*
10 [4]*սեղանոյ, Զի թշուառացան դաշտք.*
*սուգ առցէ երկիր, զի թշուառացաւ ցո-*
*րեան, ցամաքեցաւ գինի, նուազեաց*
11 *ձէթ ։* [5]*Ողբացէք, մշակք, ստացուա-*
*ծովք ի վերայ ցորենոյ եւ գարւոյ. զի*
12 *կորեան կութք յագարակէ. Ցամաքե-*
*ցաւ որթ, նուազեաց թուզ եւ նուռն*
*եւ արմաւ եւ խնձոր, եւ ամենայն փայտ*
*ագարակի չորացաւ. զի* [6]*յամօթ արա-*
*րին զուրախութիւն որդիք մարդկան ։*
13 *Քրձազգածք եղերուք, կոծեցարուք,*
*քահանայք. սուգ առէք, պաշտօնեայք*
*սեղանոյ. մտէք ննջեցէք խորգով, պաշ-*
*տօնեայք* [7]*Աստուծոյ. զի պակասե-*
*ցին ի տանէ Աստուծոյ ձերոյ* [8]*զոհք եւ*
14 *սպանդք ։ Սրբեցէք պահս, քարոզեցէք*
*պաղատանս. ժողովեցէք զծերս, ամե-*
*նայն բնակիչք երկրիդ, ի տուն Աստուծոյ*
*ձերոյ, եւ աղաղակեցէք առ* [9]*Տէր սրտի*
15 *մտօք ։ Վա՜յ ինձ, վա՜յ ինձ, վա՜յ ինձ յաւուր*
*յայնմիկ. զի մերձ է օր Տեառն. իբրեւ*
[10]*թշուառութիւն ի թշուառութենէ հաս-*
16 *ցէ ։ Առաջի աչաց ձերոց սպառեցան*
*կերակուրք՝ ի տանէ Աստուծոյ ձերոյ,*
17 *ուրախութիւն եւ խնդութիւն ։ Խայտա-*
*ցին երինջք ի մսուրս իւրեանց. ապա-*
*կանեցան գանձք, տապալեցան շտե-*
*մարանք, զի խորշակահար եղեւ ցորեան ։*
18 [11]*Զի՞նչ համբարեսցուք ի նոսա. լացին*
*դասակք անդւոց, զի ոչ գոյր նոցա ա-*
*րօտ, եւ հօտք խաշանց սատակեցան ։*
19 *Առ քեզ, Տէր, աղաղակեցից, զի հուր*
*սատակեաց* [12]*զգեղեցկութիւն անապա-*
*տի, եւ բոց ծախեաց զամենայն փայտս*
20 *ագարակի ։ Եւ երէ վայրի ի քեզ հայե-*
*ցաւ. զի ցամաքեցան վտակք ջուրց, եւ*
*հուր եկեր* [12]*զգեղեցկութիւն անապատի ։*

## ԳԼ. Բ

1 **Փ***ող հարէք ի Սիոն, քարոզ կարդացէք*
*ի լերին սրբութեան իմոյ.* [13]*ժողովեսցին*
*ամենայն բնակիչք երկրի. զի հասեալ*
2 *է օր Տեառն, զի մերձ է ։ Օր խաւարի*
*եւ մգի ; օր ամպոյ եւ մառախղոյ. իբ-*
*րեւ առաւօտ տարածեալ ի վերայ լե-*
*րանց. զօր բազում եւ հզօր, նման նմա*

---

[1] Եբր. խառնճի [2] Եբր. գրուիճ ։ (5) Սթափեցարուք, արբեալք, և լացէք, ողբացարուք ամենեքեան որ ըմպէք գինի, վասն քաղցուի. զի հատաւ ի բերանոյ ձերմէ [3] Եբր. իբրեւ կոյս քրձազգած ի վերայ առն մանկութեան իւրոյ ։ (9) Բարձան զոհ եւ նուէր [4] Եբր. Տեառն [5] Եբր. Ցամօթ լերուք, մշակք. ողբացէք, այգեգործք, [6] Եբր. ցամաքեցաւ ուրախութիւն որդւոց

[7] Եբր. Աստուծոյ իմոյ [8] Եբր. զոհ եւ նուէր [9] Եբր. Տէր ։ (15) Վա՜յ [10] Եբր. աւերումն յԱմենակալէն ։ (16) Ո՞չ առաջէն պակասեաց կերակուր առաջի աչաց մերոց՝ ի տանէ Աստուծոյ մերոյ ուրախութիւն եւ խնդութիւն ։ (17) Փտեցան սերմանք ընդ կոշտիւք իւրեանց, ամայացան [11] Եբր. Զիա՜րդ հեծէ երէ վայրի. մոլորեցան [12] Եբր. զարօտս [13] Եբր. զարհուրեսցին

ոչ եղեւ յաւիտենից, եւ զհետ նորա ոչ
եւս յաւելցի լինել ազգաց մինչեւ յազգս։
3 Առաջ նորա հուր ծախիչ, եւ զկնի նո-
րա բոց բորբոքեալ․ իբրեւ զդրախտ
[1]փափկութեան երկիրդ առաջի նորա,
եւ զկնի նորա դաշտ ապականութեան,
եւ ապրեալ ոչ իցէ ի նմանէն։
4 Իբրեւ զտեսիլ երիվարաց տեսիլ նորա․
5 իբրեւ զհեծեալս արշաւեսցեն։ Եւ իբրեւ
զշաչիւն կառաց ի վերայ գլխոց լերանց
ապաստակեսցեն, իբրեւ զձայն բոցոյ հրոյ
որ ուտիցէ զեղէգն, իբրեւ զօր բազում
եւ հզօր պատրաստեալ ի պատերազմ։
6 Յերեսաց նոցա [2]խորտակեսցին ազգք,
եւ ամենայն դէմք իբրեւ զայրեցեալ պու-
7 տան։ Իբրեւ զախոյեանս յարձակեսցին,
եւ իբրեւ զարս պատերազմողս ելցեն ի
վերայ պարսպաց․ իւրաքանչիւր ի վեր
ճանապարհ գնասցէ, եւ մի՛ խոտորես-
8 ցին ի շաւղաց իւրեանց․ Այր [3]յեղբօրէ
եւ յընկերէ իւրմէ մի՛ զատցի․ ծանրա-
ցեալք զինուք իւրեանց գնասցեն,
եւ նետիւք իւրեանց անկցին եւ մի
9 վախճանեսցին"։ Հասցեն ի վերայ քա-
ղաքին, եւ ընթասցին ի վերայ պարս-
պաց․ ելցեն յապարանս, եւ մտցեն ընդ
10 պատուհանս իբրեւ զգողս։ Յերեսաց
նոցա խռովեսցի երկիր, եւ երկինք
շարժեսցին․ արեգակն եւ լուսին խա-
ւարեսցին, եւ աստեղք ծածկեսցեն զլոյս
11 իւրեանց։ Եւ Տէր տացէ զձայն իւր ա-
ռաջի երեսաց զօրութեան իւրոյ․ զի
բազում է յոյժ բանակ նորա, [4]եւ հզօր
գործ պատգամաց" նորա․ զի մեծ է
օր Տեառն, մեծ եւ երեւելի յոյժ․ եւ
ո՞վ իցէ նմա բաւական։
12 Եւ արդ ասէ Տէր [5]Աստուած ձեր",
Դարձարուք առ իս յամենայն սրտէ ձեր-
13 մէ, պահօք եւ լալով եւ կոծելով։ Պա-
տառեցէք զսիրտս ձեր, եւ մի՛ զհան-
դերձս, եւ դարձարուք առ Տէր Աս-
տուած ձեր․ զի ողորմած եւ գթած է,
երկայնամիտ եւ բազումողորմ, եւ զղջա-
14 նայ ի վերայ չարեաց։ Ո՞ գիտէ եթէ
դարձցի եւ ապաշաւեսցէ, եւ թողցէ
զկնի իւր օրհնութիւն, [6]եւ զոհս եւ
սպոնդ Տեառն Աստուծոյ մերում"։

[1] Եբր. Եդեմայ [2] Եբր. տագնապեսցին [3] Եբր. զընկեր իւր մի՛ տագնապեսցէ, իւրաքանչիւր զճանապարհ իւր գնասցէ․ թէպէտեւ անկցին ի վերայ զինուց, մի՛ խորտակեսցին [4] Եբր. զի հզօր է որ առնէ զբան [5] Յեբր. պակասէ
[6] Եբր. զոհ եւ նուէր Տեառն Աստուծոյ ձերում

15 Փող հարէք ի Սիոն, սրբեցէք պահս,
16 քարոզեցէք պաղատանս․ ժողովեցէք,
զժողովուրդս, սրբեցէք զեկեղեցի,
ընտրեցէք զծերս, ժողովեցէք զաղայս
ստնդիացս․ ելցէ փեսայ ի սենեկէ իւրմէ,
17 եւ հարսն յառագաստէ։ Ընդ աստիճանս եւ
ընդ սեղանն լացցեն քահանայք եւ պաշ-
տօնեայք Տեառն, եւ ասասցեն, Խնայեա,
Տէր, ի ժողովուրդս քո, եւ մի՛ տար
զժառանգութիւն քո ի նախատինս՝ տիրել
ի վերայ նորա ազգաց․ զի մի՛ ասասցեն
ի հեթանոսս՝ թէ Ո՞ւր է Աստուած նոցա։
18 Եւ նախանձեցաւ Տէր վասն երկրի
իւրոյ, եւ խնայեաց ի ժողովուրդ իւր։
19 Եւ պատասխանի ետ Տէր ժողովրդեան
իւրում եւ ասէ, Ահաւասիկ ես առաքեմ
ի ձեզ զցորեան եւ զգինի եւ զձէթ, եւ
լցջիք ի նոցանէն․ եւ ոչ եւս տաց զձեզ
20 ի նախատինս ազգաց։ Եւ զհիւսիսայինն
հալածեցից ի ձէնջ, եւ մերժեցից զնա
յերկիր [7]անջուր․ եւ ապականեցից զա-
ռաջ նորա ի ծովն առաջին, եւ զվերջ"
նորա ի ծովն վերջին․ եւ ելցէ չարու
նորա, եւ բուրեսցէ հոտ նորա․ զի մե-
21 ծացան գործք նորա։ Քաջալերեաց, եր-
կիր, խնդա եւ ուրախ լեր, զի մեծա-
22 ցոյց Տէր զառնել իւր ընդ քեզ։ Քաջա-
լերեաց, երէ վայրի, զի դալարեցան
դաշտք անապատի․ զի ծառ ետ զպտուղ
իւր, որթ եւ թզենի ետուն զզօրու-
23 թիւն իւրեանց։ Որդիք Սիոնի, ցնծա-
ցէք եւ ուրախ լերուք ի Տէր Աստուած
ձեր․ զի [8]ետ ձեզ Տէր կերակուր ար-
դարութեան"․ եւ տեղասցէ ձեզ անձ-
րեւ կանուխ եւ անագան [9]իբրեւ զա-
24 ռաջինն"։ Եւ լցցին կալք ցորենոյ, եւ
25 զեղցին հնձանք գինւոյ եւ իւղոյ։ Եւ
հատուցից ձեզ փոխանակ ամացն յորս
եկեր մարախն եւ ջորեակն եւ [10]թրթուրն,
զօր իմ մեծ զոր առաքեցի ի վերայ ձեր․
26 Եւ ուտելով կերիջիք, եւ յագեսջիք, եւ
օրհնեսջիք զանուն Տեառն Աստու-
ծոյ ձերոյ որ արար ընդ ձեզ սքանչե-
լիս․ եւ մի՛ եւս ամաչեսցէ ժողովուրդ
27 իմ յաւիտեան։ Եւ ծանիջիք թէ ի մէջ
Իսրայէլի եմ ես․ եւ ես Տէր Աստուած
ձեր, եւ չիք ոք բաց յինէն․ եւ ոչ ա-
մաչեսցէ ժողովուրդ իմ յաւիտեան։

[7] Եբր. անջուր եւ ամայի․ առաջ նորա ի ծովն արեւելից, եւ վերջ [8] Եբր. տայ ձեզ չափով զկանոնսն [9] Կամ, յառաջնումն [10] Եբր. զրուբճն եւ զթանիճն

28 Եւ եղիցի յետ այսորիկ հեղից [1]յՈգւոյ
իմմէ" ի վերայ ամենայն մարմնոյ. եւ
մարգարէասցին ուստերք ձեր եւ դստերք
ձեր. եւ ծերք ձեր երազովք երազես-
ցին, եւ երիտասարդք ձեր տեսիլս տես-
29 ցեն։ Եւ ի վերայ ծառայից իմոց, եւ ի
վերայ աղախնաց իմոց յաւուրսն յայնո-
սիկ հեղից [1]յՈգւոյ իմմէ, եւ մարգա-
30 րէասցին"։ Եւ տաց նշանս յերկինս ի
վեր եւ յերկիր ի խոնարհ՝ արիւն եւ հուր
31 եւ մրրիկ ծխոյ։ Արեգակն դարձցի ի
խաւար եւ լուսին յարիւն, մինչչեւ ե-
կեալ իցէ օր Տեառն մեծն եւ երեւելին։
32 Եւ եղիցի ամենայն որ կարդասցէ զա-
նուն Տեառն՝ կեցցէ. զի ի լեառն Սիոն
եւ յԵրուսաղէմ եղիցի ապրեալ, որպէս
եւ ասաց Տէր, եւ [2]աւետարանեալ զորս
Տէր կոչեսցէ առ ինքն։

Գլ. Գ

1 Զի ահաւասիկ ես յաւուրսն յայնոսիկ,
եւ ի ժամանակին յայնմիկ՝ յորում դար-
ձուցից զգերութիւն Հրէաստանի եւ
2 զԵրուսաղեմի, Եւ ժողովեցից զամե-
նայն ազգս, եւ իջուցից զնոսա ի ձորն
[3]Յովսափատու. եւ դատեցայց զնոսա
անդ, վասն ժողովրդեան իմոյ եւ ժա-
ռանգութեան իմոյ Իսրայելի, որ ցրուե-
ցան ընդ ամենայն ազգս, եւ զերկիր
3 իմ բաժանեցին. Եւ ի վերայ ժողովր-
դեան իմոյ վիճակս արկանէին, եւ ետուն
զպատանեակս կապէնս պոռնկաց, եւ
զաղջկունս վաճառէին ընդ գինւոյ եւ
4 ըմպէին։ Եւ [4]դուք եւս տակաւին ինձ",
Ծուր եւ Ծայդան եւ ամենայն [5]Գալի-
լեա այլազգեաց", միթէ հատուցմա՞ն
ինչ հատուցանիցէք ինձ, [6]կամ ոխս պա-
հիցէք" ինձ, վաղվաղակի տարապա-
հատուցից զհատուցումն ձեր ի գլուխս
5 ձեր։ Փոխանակ զի զարծաթն իմ եւ
զոսկին առէք, եւ զընտիր [7]ընտիր եւ
զգեղեցիկ անօթսն" տարայք ի մեհեանս
6 ձեր, Եւ զորդիսն Յուդայ եւ զորդիսն
Երուսաղեմի վաճառեցէք որդւոյն Յու-
նաց, զի մերժիցէք զնոսա ի սահմանաց
7 իւրեանց. Արդ ես [8]կանգնեցից զնոսա
ի տեղւոջէ ուր վաճառեցէք զնոսա անդր,
եւ հատուցից զհատուցումն ձեր ի գլուխս
8 ձեր. Եւ մատնեցից զուստերս ձեր եւ
զդստերս ձեր ի ձեռս որդւոցն Յուդայ, եւ
վաճառեսցեն զնոսա [9]ի գերութիւն յազգ
հեռաւոր բայական. զի Տէր խօսեցաւ։
9 Քարոզ կարդացէք զայդ յազգս. ժամ
տուք մարտի, զարթուցէք զպատերազ-
մողս. ժողովեցարուք եւ ելէք ամենայն
10 արք պատերազմողք։ Կոտորեցէք զխոփս
ձեր ի սուսերս, եւ զգերանդիս ձեր ի գե-
զարդունս. տկարն խրախուսեսցէ թէ Հզօր
11 եմ ես։ Ժողովեցարուք եւ մտէք, ազգք
ամենայն շուրջանակի, անդր ժողովեցա-
րուք. [10]հանդարտն պատերազմօղ եղիցի"։
12 Զարթիցեն եւ ելցեն [11]ամենայն ազգք ի
ձորն Յովսափատու, զի անդ նստայց
դատել զամենայն ազգս շուրջանակի։
13 Արկէք մանգաղ, զի հասեալ են կութք.
մտէք կոխեցէք, զի լցեալ է հնձան եւ
զեղուն գուբք. զի բազմացան չարիք
14 նոցա։ [12]Ձայնք հնչեցին" ի Ձորն դատաս-
տանի. զի մերձ է օր Տեառն ի Ձորն
15 դատաստանի։ Արեգակն եւ լուսին խա-
ւարեսցին, եւ աստեղք ծածկեսցեն զլոյս
16 իւրեանց։ Եւ Տէր ի Սիոնէ գոչեսցէ, եւ
յԵրուսաղեմէ տացէ զձայն իւր, եւ շար-
17 ժեսցին երկինք եւ երկիր։ [13]Այլ Տէր
խնայեսցէ ի ժողովուրդ իւր եւ զօրա-
18 ցուսցէ զորդիսն" Իսրայելի։ Եւ ծանի-
ջիք թէ ես եմ Տէր Աստուած[14] որ բնա-
կեալ եմ ի Սիոն լերին սրբութեան ի-
մոյ. եւ եղիցի Երուսաղէմ սուրբ, եւ
այլազգիք այլ ոչ եւս անցցեն ընդ նա։
19 Եւ եղիցի յաւուր յայնմիկ բղխեսցեն
լերինք [15]զքաղցրութիւն, եւ բլուրք յոր-
դեսցեն զկաթն, եւ ամենայն [16]աղբերք
Յուդայ բղխեսցեն ջուրս. եւ աղբեւր
ի տանէ Տեառն ելցէ, եւ արբուսցէ զձորն
20 [17]վիճակաց։ Եգիպտոս յապականութիւն
եղիցի, եւ Եդովմ ի դաշտ ապականու-
թեան յանիրաւութեանց որդւոյն Յու-
դայ. փոխանակ զի հեղին արիւն ար-
21 դար [18]ի մէջ իւրեանց"։ Բայց Հրէաստան
յաւիտեան բնակեսցէ, եւ Երուսաղէմ
22 ազգաց յազգս։ Եւ [19]խնդրեցից զարիւն
նոցա, եւ ոչ արարից անպարտ". եւ Տէր
բնակեսցէ ի Սիոն։

[1] Եբր. զՀոգի իմ [2] Եբր. ի մէջ մնացորդաց
[3] Այսինքն, դատաստանի Տեառն [4] Եբր. զի՞ կայ իմ եւ ձեր [5] Եբր. սահմանք Փղշտացւոց
[6] Եբր. եթէ հատուցանիցէք հատուցումն [7] Եբր. ընտիրս իմ [8] Եբր. զարթուցից

[9] Եբր. Սաբայեցւոց, [10] Եբր. անդր իջո, Տէր, զզօրաւորս քո [11] Եբր. դ–յ–ո–է [12] Եբր. Ամբո՛խ, ամբո՛խ [13] Եբր. Եւ Տէր ապաւէն ժողովրդեան իւրոյ, եւ ամրութիւն որդւոցն [14] Եբր—յէջէն յառէլ—, ձեր [15] Եբր. զքաղցու [16] Եբր. ձորք [17] Եբր. Սատտիմ [18] Եբր. յերկրին նոցա [19] Կամ, սրբեցից զարիւն նոցա, զոր չէր իմ սրբեալ

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ
# ԱՄՈՎՍԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 [1] ՊԱՏԳԱՄՔ Ամովսայ որ եղեն յԱկ-
կարիմ՚՚ Թեկուայ, զորս ետես ի
վերայ [2]Երուսաղեմի յաւուրս Ոզիայ ար-
քայի Հրէաստանի, եւ յաւուրս Յերո-
բովամայ որդւոյ Յովասայ արքայի Իս-
րայէլի, երկուք ամօք յառաջ քան զերկ-
2 րաշարժն։ Եւ ասէ,
Տէր ի Սիոնէ բարբառեցաւ, եւ
յԵրուսաղեմէ ետ զձայն իւր. եւ սուգ
առին արօտք հօտից, եւ ցամաքեցան
բարձունք Կարմեղայ։
3 [3]Եւ ասէ Տէր, Ի վերայ երից անօրէ-
նութեանցն Դամասկեայ, եւ ի վերայ
չորիցն՝ ոչ [4]դարձայց ի նմանէ. փոխա-
նակ զի կտրէին զյղիս Գաղաադացւոց
4 սղոցօք՚՚ երկաթեօք։ Եւ առաքեցից
հուր ի տունն Ազայելի, եւ կերիցէ [5]զհի-
5 մունս որդւոյն Ադերայ՚՚։ Եւ խորտակե-
ցից զնիգս Դամասկեայ, եւ սատակե-
ցից զբնակիչս դաշտացն Ովնայ, եւ [6]կո-
տորեցից զազգն յարանց Խառանու, եւ
գերեսցի ընտիր՚՚ ժողովուրդն Ասորւոց,
ասէ Տէր։
6 Այսպէս ասէ Տէր. Ի վերայ երից ամ-
պարշտութեանցն Գազայ, եւ ի վերայ
չորիցն՝ ոչ [7]դարձայց ի նոցանէն. փո-
խանակ զի գերեցին զգերութիւն Սո-
7 ղոմոնի արդեւոր՚՚ յԵդովմ։ Եւ առաքե-
ցից հուր ի վերայ պարսպացն Գազայ,
8 եւ կերիցէ [8]զհիմունս նորա։ Եւ սատա-
կեցից զբնակիչս յԱզովտայ, եւ [9]բարձ-
ցի ազգն՚՚ յԱսկաղոնէ. եւ ածից զձեռն
իմ ի վերայ Ակկարոնի, եւ կորիցեն մնա-
ցորդք [10]այլազգեացն, ասէ Տէր Տէր։
9 Այսպէս ասէ Տէր. Ի վերայ երից ամ-
պարշտութեանցն Ծուրայ, եւ ի վերայ
չորիցն՝ ոչ [11]դարձայց ի նմանէ. փոխա-
նակ զի արգելին զգերութիւնն Սողոմո-
նի՚՚ յԵդովմ, եւ ոչ յիշեցին զուխտ եղ-
10 բարց։ Եւ առաքեցից հուր ի վերայ
պարսպացն Ծուրայ, եւ կերիցէ [8]զհի-
մունս նորա։
11 Այսպէս ասէ Տէր. Ի վերայ երից ամ-
պարշտութեանցն Եդովմայ, եւ ի վերայ
չորիցն՝ ոչ [12]դարձայց ի նոցանէ. փո-
խանակ զի հալածեաց սրով զեղբայր
իւր, եւ ապականեաց զեղբայր յերկրի.
եւ յափշտակեաց ի վկայութիւն զցա-
սումն իւր, եւ զյանդգնութիւն իւր պա-
12 հեաց ի հաղթութիւն՚՚։ Եւ առաքե-
ցից հուր ի Թեման, եւ կերիցէ [13]հուր
զհիմունս պարսպաց նորա՚՚։
13 Այսպէս ասէ Տէր. Ի վերայ երից ամ-
պարշտութեանց որդւոցն Ամոնայ, եւ
ի վերայ չորիցն՝ ոչ [14]դարձայց ի նոցանէ՚՚.
փոխանակ զի հերձուին զյղիս Գաղաա-
դացւոց, զի ընդարձակեսցեն զսահմանս
14 իւրեանց։ Բորբոքեցից հուր ի վերայ
պարսպացն Ռաբայ, եւ կերիցէ [8]զհի-
մունս նորա աղաղակաւ յաւուր պա-
տերազմի, [15]եւ շարժեսցի յաւուր վախ-
15 ճանի իւրոյ։ Եւ գնասցեն ի գերութիւն
թագաւորք նոցա, քուրմք նոցա եւ իշ-
խանք նոցա՚՚ ի միասին, ասէ Տէր։

---

[1] Եբր. Բանք Ամովսայ որ ի հովուաց [2] Եբր. Իսրայէլի [3] Եբր. Այսպէս [4] Եբր. դարձուցից զվճիռ նորա, քանզի կալսեցին զԳաղաադ կամնասայլիւք [5] Եբր. զապարանս Բենադադայ [6] Եբր. զոր ունին զգաւազան ի տանէն Եդենայ. եւ գերեսցի ի Կիր [7] Եբր. դարձուցից զվճիռ նորա, քանզի գերեցին զգերութիւն ի սպառ մատնել [8] Եբր. զապարանս [9] Եբր. զոր ունին զգաւազան

[10] Եբր. Փղշտացւոցն [11] Եբր. դարձուցից զվճիռ նորա, քանզի մատնեցին ի սպառ զգերութիւնն [12] Եբր. դարձուցից զվճիռ նորա, քանզի հալածեաց սրով զեղբայր իւր, եղծ զողորմութիւն իւր, եւ պատառեաց ի սպառ զբարկութիւն իւր, եւ զցասումն իւր պահեաց յաւիտեան [13] Եբր. զապարանս Բոսրայ [14] Եբր. դարձուցից զվճիռ նոցա [15] Եբր. փոթորկաւ յաւուր մրրկի։ (15) Եւ գնասցէ ի գերութիւն Մեղքոմ (կամ, թագաւոր նոցա), ինքն եւ իշխանք նորա

## Գլ. Բ

1 Այսպէս ասէ Տէր. Ի վերայ երից ամ-
պարշտութեանցն Մովաբու, եւ ի վերայ
չորիցն՝ ոչ [1]դարձայց ի նմանէն", փոխա-
նակ զի այրեցին զոսկերս [2]թագաւորացն
2 Եդովմայեցւոց ի մոխիր։ Առաքեցից
հուր ի վերայ Մովաբու, եւ կերիցէ հուր
[3]զհիմունս քաղաքաց նորա. եւ մեռցի ի
տկարութեան Մովաբ", աղաղակաւ եւ
3 ձայնիւ փողոյ. Եւ սատակեցից զդա-
տաւոր [4]ի նմանէ, եւ զամենայն իշխանս
նորա կոտորեցից ընդ նմին, ասէ Տէր։
4 Այսպէս ասէ Տէր. Ի վերայ երից ամ-
պարշտութեանց որդւոցն Յուդայ, եւ ի
վերայ չորիցն՝ ոչ [1]դարձայց ի նմանէն",
փոխանակ զի մերժեցին զօրէնս Տեառն
եւ զհրամանս նորա ոչ պահեցին, եւ
մոլորեցուցին զնոսա [5]սնոտեօք իւրեանց
զոր արարին," զորոց զհետ գնացին հարքն
5 նոցա։ Եւ առաքեցից հուր ի վերայ
Հրէաստանի, եւ կերիցէ [6]զհիմունս Ե-
րուսաղեմի։
6 Այսպէս ասէ Տէր. Ի վերայ երից ամ-
պարշտութեանցն Իսրայէլի, եւ ի վե-
րայ չորիցն՝ ոչ [1]դարձայց ի նմանէ", փո-
խանակ զի վաճառեցին զարդարն ար-
7 ծաթոյ, եւ զաղքատն ընդ կօշկաց. Որ
[7]կոխեն զհող երկրի. եւ կախեն զգլուխս
աղքատաց", եւ զճանապարհս խոնար-
հաց թիւրեն. եւ հայր եւ որդի առ մի
[8]բոզ մտանեն, զի պղծեսցեն զանուն
8 Աստուծոյ իւրեանց։ Եւ զձորձս իւ-
րեանց առագաստ ձգէին ընդ խնքեանս
եւ ընդ սեղանն", եւ զգինի զրպարտու-
թեանց ըմպէին ի տան աստուծոյ իւ-
9 րեանց։ Բայց ես բարձի զԱմովրհացին
յերեսաց նոցա, որոյ բարձրութիւն իւր
բարձրութիւն մայրի, եւ հզօր էր իբրեւ
զկաղնի. եւ բարձի զպտուղ նորա ի վե-
րուստ եւ զարմատս նորա ի ներքուստ։
10 Եւ ես հանի զձեզ յերկրէն Եգիպտաց-
ւոց, եւ շրջեցուցի զձեզ յանապատ ամս
քառասուն՝ ժառանգեցուցանել զերկիրն
11 Ամովրհացւոց։ Եւ առի յորդւոց ձերոց
ի մարգարէս, եւ յերիտասարդաց ձերոց
յուխտաւորս. միթէ ո՞չ իցէ այսպէս, որդիք
12 Իսրայէլի, ասէ Տէր։ Եւ արբուցանէիք
ուխտաւորացն [9]ինայ զգինի, եւ մար-
գարէիցն պատուիրէիք զի մի մար-
13 գարէասցին։ [10]Վասն այդորիկ ահաւասիկ
ես հոլովեցուցանեմ ի ներքոյ ձեր՝ զոր
14 օրինակ հոլովի սայլ լի օրանաւ։ Եւ կո-
րիցէ փախուստ յընթացողէն, եւ որ զօ-
րաւորն իցէ մի զօրասցի ի զօրութեան
իւրում, եւ [11]պատերազմողն մի ապրե-
15 ցուսցէ զանձն իւր, Եւ աղեղնաւորն
մի կարասցէ ունել զդէմ, եւ որ արագն
իցէ ոտիւք՝ մի ապրեսցի, եւ հեծեալն
16 մի ապրեցուսցէ զանձն իւր, Եւ [12]մի
գտցի սիրտ իւր ի զօրութեան. մերկն
հալածեսցի" յաւուր յայնմիկ, ասէ Տէր։

## Գլ. Գ

1 Լուարուք զպատգամս զայս զոր խօ-
սեցաւ Տէր ի վերայ ձեր, [13]տունդ Իսրա-
յէլի, ի վերայ ամենայն ազգաց զորս
2 հանի յերկրէն [14]Եգիպտացւոց. Բայց զձեզ"
ընտրեցի յամենայն ազգաց երկրի. վասն
այնորիկ ի ձէնջ խնդրեցից զվրէժ ամե-
3 նայն չարեաց ձերոց։ Թէ գնասցե՞ն ա-
մենեքին երկու ի միասին, թէ ոչ ճա-
4 նաչիցեն զմիմեանս։ Եթէ գոչիցէ՞ առեւծ
[15]յանտառէ, եւ ոչ իցէ որս առաջեալ
նորա". եթէ տայցէ՞ կորիւն առիւծու
զձայն իւր ի մայրւոյ իւրմէ, եւ ոչ ինչ
5 իցէ յափշտակեալ նորա։ Եթէ անկա-
նիցի՞ թռչուն [16]ի յերկիր առանց որսոր-
դի. եթէ ճայթիցէ՞ որոգայթ ի վերայ
6 երկրի" եւ ոչ ինչ իցէ ըմբռնեալ։ Եթէ
հարկանիցի՞ փող ի քաղաքի, եւ ազգն
ոչ խռովեսցի. եթէ իցէ՞ն չարիք ի քա-
7 ղաքի եւ Տեառն չիցէ արարեալ։ Վասն
այնորիկ ոչ արասցէ Տէր Աստուած իրս
ինչ, եթէ ոչ յայտնեսցէ [17]զխրատն ծա-
8 ռայից իւրոց մարգարէից։ Առեւծ գո-
չիցէ, եւ ո՞վ իցէ որ ոչ սարսիցէ. Տէր

[1]Եբր. դարձուցից զնէր— նորա [2]Եբր. թագաւորին [3]Եբր. զապարանս Կարիոթայ, եւ մեռցի Մովաբ աղմկաւ [4]Եբր. ի միջոյ նորա [5]Եբր. ստուտիք իւրեանց [6]Եբր. զապարանս [7]Եբր. ցանկան հողոյ երկրին ի գլուխ աղքատաց, (կամ կոխեն առնեն զգլուխ աղքատաց ընդ հող երկրի) [8]Եբր. կին մտանեն, զի պղծեսցեն զանուն սրբութեան իմոյ։ (8)Եւ ի վերայ ձորձոց գրաւելոց ի կողմն յենէին առ ամենայն սեղանոյ

[9]Եբր. զգինի [10]Եբր. Ահա ես ընկճեմ զձեզ ուր էք, որպէս ընկճէ (Կամ, Ահա ես ընկճիմ ընդ ձեաւ որպէս ընկճի) [11]Եբր. հզօրն [12]Եբր. որ ժիրն է սրտիւ իւրով ի հզօրս՝ փախիցէ մերկ [13]Եբր. որդիք [14]Եբր. Եգիպտացւոց, եւ ասէ, (2) Զձեզ միայն [15]Եբր. յանտառի եւ ոչ իցէ նորա որս [16]Եբր. յորոգայթ յերկրի, եթէ չիցէ նմա լարեալ թակարդ. միթէ բառնայցի՞ որոգայթ յերկրէ, [17]Եբր. զգաղտնիս իւր

Աստուած խօսեցաւ, եւ ո՞վ իցէ որ ոչ
մարգարէասցի։
9 Պատմեցէք [1]ի գաւառս Ասորեստա-
նեայց եւ ի գաւառս" երկրին Եգիպտա-
ցւոց, եւ ասացէք, Ժողովեցարուք [2]ի
լեառն Շամրնի, եւ տեսէք սքանչելիս
բազումս" ի մէջ նորա, եւ զբռնութիւն
10 ի մէջ նորա։ Եւ ոչ [3]ծանեաւ զլինելոց
եղեռն իւր", ասէ Տէր, որ գանձէին ա-
նօրէնութիւն եւ [4]թշուառութիւն ի գա-
11 ւառս" իւրեանց։ Վասն այնորիկ այս-
պէս ասէ Տէր Աստուած [5]զՏիւրոս. Եր-
կիրդ որ շուրջ զքեւ է՝ աւերեսցի", եւ
խորտակեսցի ի քէն ամենայն զօրութիւն
քո, եւ յափշտակեսցին [6]գաւառք քո։
12 Զի այսպէս ասէ Տէր. Զոր օրինակ
թէ կարասցէ թափել հովիւ ի բերանոյ
առիւծու աքեացս երկուս կամ բլթակ
մի ունկան, այնպէս զերծցին որդիքն
Իսրայէլի որ բնակեալ են ի Սամարիա,
[7]դէմ յանդիման ազգին եւ ի մէջ Դամաս-
կացւոց։
13 Քահանայք, լուարուք" եւ վկայու-
թիւն դիք տանդ Յակոբայ, ասէ Տէր
14 [8]ամենակալ։ Զի յաւուր յայնմիկ յորժամ
խնդրեցից զվրէժ ամպարշտութեանցն
Իսրայէլի ի նմանէ, առից վրէժ եւ զսե-
ղանոյն Բեթելայ, եւ փշրեսցին եղջեւրք
15 սեղանոյն եւ անկցին յերկիր։ Եւ խոր-
տակեցից զապարանս [9]թեւաւորս ի վե-
րայ ամարանոցն ապարանիցն", եւ ա-
պականեսցին ապարանքն փղոսկրեայք,
եւ բազում եւ այլ ապարանք անկցին,
ասէ Տէր։

Գլ. Դ

1 Լուարուք, [10]զբան Տեառն", երինջք
Բասանու, որ էք ի լերինս Շամրնի որ
զրկէք զաղքատս եւ առ ոտն հարկանէք
զանանկն, որ ասէիք ցտեարս ձեր, Մա-
2 տուցէք մեզ զի՞նչ զի արբցուք։ Երդնու
[11]Տէր խորութիւնս իւր, եթէ Ահա աւուրք
եկեսցեն ի վերայ ձեր, եւ [12]առցեն զձեզ
զինուք, եւ զզօսաոր ընդ ձեզ են արկցեն

[1] Եբր. յապարանս Ազովտոսի, և յապարանս [2] Եբր. ի լերինս Շամրնի, և տեսէք աղմուկ բազում [3] Եբր. գիտացին առնել ուղղութիւն [4] Եբր. յափշտակութիւն յապարանս [5] Եբր. Թշնամին եղիցի շուրջ զերկրաւ, [6] Եբր. ապարանք [7] Եբր. յանկեան բազմոցի և ի գահոյս պաստառալիրս։ (13) Լուարուք [8] Եբր. Եհովայ՝ Աստուած զօրութեանց [9] Եբր. ձմերոցաց հանդերձ ամարաստուն ապարանիւք [10] Եբր. զբանս զայս [11] Եբր. Տէր Եհովայ՝ [12] Եբր. բարձցէ զձեզ կարթիւք, եւ

3 ի սանս ջեռուցեալս։ Եւ ելանիցէք մերկք՝
միմեանց դէմ ընդդէմ, եւ անկանիցիք ի
4 լերինն Ռեմմանայ", ասէ Տէր։ Մտէք ի
Բեթէլ եւ ամպարշտեցայք, եւ ի Գաղ-
գաղա յաճախեցէք ամպարշտել. եւ մա-
տուցէք զզոհս ձեր ընդ առաւօտս, եւ
5 յերիր աւուր զտասանորդս ձեր։ [13]Ըն-
թերցան օրէնս արտաքոյ, եւ կոչէին
խոստովանութիւնս. պատմեցէք թէ զայս
սիրեցին որդիքն Իսրայէլի, ասէ Տէր"։
6 Եւ ես տացի ձեզ [14]ցաւ ատամանց յա-
մենայն քաղաքս ձեր, եւ կարօտութիւն
հացի յամենայն տեղիս ձեր. եւ ոչ դար-
7 ձարուք առ իս, ասէ Տէր։ Եւ արգելի
ի ձէնջ զանձրեւ երիւք ամսովք յառաջ
քան զկութս. ի մի քաղաք տեղացի,
եւ ի միւս քաղաք ոչ տեղացի. [15]մի վի-
ճակ թացից, եւ ի միւսն յորում ոչ տե-
8 ղացից ցամաքեսցի։ Եւ ժողովեսցին"
երկու եւ երեք քաղաք ի մի քաղաք
ըմպել ջուր, եւ [16]մի՛ յագեսցին". եւ ոչ
9 դարձարուք առ իս, ասէ Տէր։ Հարի
զձեզ տապով եւ [17]արկի զձեւք դալուկն.
եւ յաճախեցէք ի պարտէզս ձեր եւ յայ-
գիս եւ ի թզենիս ձեր եւ ի ձիթենիս, եւ
եկեր թրթուր". սակայն եւ այնպէս ոչ
10 դարձարուք առ իս, ասէ Տէր։ Առա-
քեցի ի վերայ ձեր մահ [18]ի ճանապարհին
Եգիպտացւոց, եւ կոտորեցի սրով զերի-
տասարդս ձեր հանդերձ գերութեամբ
երիվարաց ձերոց, եւ [19]ծախեցի զբա-
նակս ձեր հրով բարկութեան իմոյ". սա-
կայն եւ այնպէս ոչ դարձարուք առ իս,
11 ասէ Տէր։ Կործանեցի զձեզ՝ որպէս կոր-
ծանեաց Աստուած զՍոդոմ եւ զԳոմոր,
եւ եղերուք իբրեւ զխանձող զերծեալ
ի հրոյ. սակայն եւ այնպէս ոչ դարձա-
12 րուք առ իս, ասէ Տէր։ Վասն այնորիկ
այսպէս արարից քեզ, Իսրայէլ. բայց

զմնացորդս ձեր կարթիւք ձկանց։ (3) Եւ ելանիցէք ընդ խրամատս իւրաքանչիւր յանդիման իւր, և անկանիցիք յամրոցն [13] Եբր. Եւ մատուցէք ի խմորոյ զգոհութեանն, և կոչեցէք զկամաւոն և քարոզեցէք. զի այսպէս սիրեցէք, որդիք Իսրայէլի, ասէ Տէր Եհովայ [14] Եբր. սրբութիւն [15] Եբր. ի մի վիճակ տեղաց եւ միւսն ուր ոչ տեղաց՝ ցամաքեցաւ։ (8) Եւ ժողովեցան [16] Եբր. ոչ յագեցան [17] Եբր. դալկաւ. զբազմութիւն պարտիզաց ձերոց եւ այգեաց ձերոց և թզենեաց ձերոց և ձիթենեաց ձերոց եկեր խառնիճ [18] Կամ, ճանապարհաւ [19] Եբր. հանի զհոտ բանակաց ձերոց յանգունս ձեր

զի այսպէս առնելոց եմ քեզ՝ [1]պատ-
րաստեա կոչել զանուն Տեառն Աս-
13 տուծոյ քո Իսրայէլ։ Զի ահաւասիկ ես
եմ՝ որ հաստատեմ զորոտմունս եւ հաս-
տատեմ զհողմս. եւ պատմէ ի մէջ մարդ-
կան զօծեալ իւր, առնէ առաւօտ եւ
մէգ, եւ ելանէ" ի վերայ բարձանց երկ-
րի. [2]Տէր Աստուած ամենակալ" անուն
է նորա։

ԳԼ. Ե

1 Լուարուք զբանս զայս՝ զոր ես [3]առից
2 ի վերայ ձեր ողբս։ Անկաւ տունդ Իս-
րայէլի," եւ ոչ եւս յաւելուցու յառնել
կոյսն Իսրայէլի. կործանեցաւ յերկրի
իւրում, եւ չիք ոք որ կանգնիցէ զնա։
3 Քանզի այսպէս ասէ Տէր *Տէր. Ի քաղաքէ
յորմէ ելանէին հազարք՝ մնասցէ հարիւր,
եւ յորմէ ելանէին հարիւր՝ մնասցէ տասն
4 տանդ Իսրայէլի։ Քանզի այսպէս ասէ
Տէր առ տունդ Իսրայէլի. Խնդրեցէք
5 զիս եւ կեցջիք. Եւ մի՛ խնդրէք զԲե-
թէլ, եւ ի Գաղգաղա մի՛ մտանէք, եւ
ի Ջրհորն երդման մի՛ ելանէք. զի Գաղ-
գաղա գերելով գերեսցի, եւ Բեթէլ ե-
6 ղիցի իբրեւ զչեղեալ։ Խնդրեցէք զՏէր
եւ կեցջիք. զի մի՛ բորբոքեսցի իբրեւ
զհուր [4]տունն Յովսեփայ եւ կերիցէ
զնա, եւ ոչ ոք իցէ որ շիջուցանիցէ
7 [5]տանդ Իսրայէլի։ Որ առնէ ի բարձունս
իրաւունս, եւ արդարութիւն եդ յերկ-
8 րի. Որ առնէ զամենայն եւ նորոգէ",
եւ դարձուցանէ յայգ զստուերս մահու,
եւ զտիւ ի գիշեր մթացուցանէ. որ կո-
չէ զջուրս ծովու եւ հեղու ի վերայ ե-
րեսաց երկրի. [6]Տէր ամենակալ անուն
9 է նորա. Որ բաշխէ զբեկումն ի վերայ
զօրութեան, եւ ածէ զթշուառութիւն
ի վերայ ամրոցաց"։
10 Ատեցին ի դրունս զյանդիմանիչս,
եւ [7]զբանս սուրբս" պղծեն արարին։
11 Վասն այնորիկ փոխանակ զի կոփէիք
զաղքատս եւ կաշառս [8]ընտրեալս առ-
նուիք ի նոցանէն, տաճարանս զարդա-
րեալս շինեսջիք, եւ մի՛ բնակեսջիք ի
նոսա, այգիս ցանկալիս տնկեսջիք, եւ
12 զգինի նոցա մի՛ արբջիք։ Զի գիտացի ես
զբազում ամպարշտութիւնս ձեր, եւ սաս-
տիկ են մեղք ձեր. առ ոտն կոխէիք զար-
դարն առնլով փոխանակս, եւ խոտորե-
13 ցուցանէիք զաղքատն ի դրունս։ Վասն
այնորիկ որ իմաստունն է՝ ի ժամանա-
կին յայնմիկ լռեսցէ, զի ժամանակն չար
14 է։ Խնդրեցէք զբարի եւ մի՛ զչար, զի
կեցջիք, եւ եղիցի ընդ ձեզ Տէր Աս-
տուած [9]ամենակալ, զոր օրինակ ասա-
15 ցէքն՝ թէ Ատեցաք զչարիս, եւ սիրե-
ցաք" զբարիս. հաստատեցէք զիրաւունս
[10]ի դրունս ձեր, զի ողորմեսցի Տէր Աս-
տուած" մնացորդաց Յովսեփայ։
16 Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր [2]Աս-
տուած ամենակալ". Յամենայն հրապա-
րակս կոծ. եւ յամենայն ճանապարհս
ասասցի Վա՜յ, վա՜յ, [11]կոչեսցի մշակ ի սուգ
17 եւ ի կոծ եւ ի ձայնարկուս. Եւ յամե-
նայն ճանապարհս" կոծ, քանզի անցից
ընդ մէջ քո, ասէ Տէր։
18 Վա՜յ որ ցանկան աւուրն Տեառն. զի՞
կայ ձեր եւ աւուր Տեառն, եւ նա խա-
19 ւար է, եւ ոչ լոյս։ Զոր օրինակ թէ
փախիցէ մարդ յերեսաց առիւծու, եւ
պատահեսցէ նմա արջ, եւ փախուցու
ի տուն, եւ յեցուսցէ զձեռս իւր յորմն,
20 եւ հարկանիցէ զնա օձ. Ո՞չ ապաքէն
խաւար է օր Տեառն, եւ ոչ լոյս, աղ-
ջամղջին, եւ ոչ գոյ ի նմա ճաճանչ։
21 Ատեցի, մերժեցի զտօնս ձեր, եւ ի
22 տարեկանս ձեր ոչ հոտոտեցայց։ Զի
թէ մատուցանիցէք ողջակէզս եւ զզոհս
ձեր՝ ոչ ընկալայց, եւ [12]յերեւելիս փրկու-
23 թեանց" ձերոց ես ոչ հայեցայց։ Ի բաց
արա յինէն զձայն երգոց քոց, եւ զնուագս
24 արգանաց քոց ես ոչ լուայց։ Եւ յորդեսցին իբրեւ զջուր իրաւունք, եւ արդա-
25 րութիւն իբրեւ զհեղեղ անհուն։ Միթէ
սպա՞նդ եւ զոհս մատուցէք ինձ յանա-

[1] Եբր. պատրաստեա զքեզ ընդ առաջ Աստուծոյ քո, Իսրայէլ։ (13) Զի ահաւասիկ որ հաստատեաց զլերինս եւ արար զհողմ, եւ յայտ առնէ մարդոյ զինչ է խորհուրդ նորա, եւ որ առնէ զառաւօտ ի խաւար, եւ գնա [2] Եբր. Եհովայ Աստուած զօրութեանց [3] Եբր. բառնամ ի վերայ ձեր յողբ, տունդ Իսրայէլի։ (2) Անկաւ [*] Եբր. Եհովայ [4] Եբր. ի տանն [5] Եբր. ի Բեթէլ։ (7) Որ շրջէք զդատաստան ի դառնութիւն, եւ զարդարութիւն ընկենուք յերկիր։ (8) Խնդրեցէք զոր արար զԲազմաստեղն եւ զհայկ [6] Եբր. Եհովայ է անուն նորա. (9) Որ շողացուցանէ զաւերումն ի վերայ հզօրին, եւ աւերումն հասցէ յամրոցն

[7] Եբր. զոր խօսին արդար՝ [8] Եբր. ցորենոյ [9] Եբր. զօրութեանց, զոր օրինակ ասացէքն։ (15) Ատեցէք զչարիս, եւ սիրեցէք [10] Եբր. ի դրան. իցէ թէ ողորմեսցի Տէր զօրութեանց [11] Եբր. կոչեսցեն զմշակ ի սուգ և զձայնարկուս ի կոծ։ (17) Եւ յամենայն այգիս եղիցի [12] Եբր. ի խաղաղականս պատարագաց

պատի անդ զքառասուն ամ, տունդ Իս-
26 րայէլի. Եւ առէք [1]զխորանն Մողոքայ,
եւ զաստղ աստուածոյն ձերոյ զՀռեմ-
փայ, զպատկերս նոցա զոր արարէք
27 ձեզ։ Եւ փոխեցից զձեզ՝ անդր քան
զԴամասկոս, ասէ Տէր, Աստուած [2]ա-
մենակալ անուն է նորա։

ԳԼ. Զ

1 Վա՜յ [3]որ անգոսնեն զՍիոն, եւ յուսա-
ցեալ իցեն ի լեառն Շամրնի. կթեցին
զիշխանութիւնս ազգաց, եւ մտին ի
2 նոսա՝ տունդ Իսրայէլի։ Անցէք [4]ա-
մենեքին ի Քաղանէ եւ տեսէք. եւ ան-
ցէք անտի ի մեծն Եմաթ [4]Հռաբայ, եւ
իջէք ի Գէթ այլազգեաց, [5]զօրաւորս
քան զամենայն քաղաքսն զայնոսիկ, ե-
թէ՝ իցե՞ն մեծ սահմանք նոցա քան
3 զսահմանս ձեր։ Որ [6]գայքդ յօր չարեաց,
որ մերձենայքդ հասանել ի չարաթս
4 ստութեանց՝. Որ ննջէքդ ի գահոյս
փղոսկրեայս, եւ փափկանայք յանկողինս
ձեր, եւ ուտէք ուլս ի հօտից եւ որթս
5 զիեցլիկս յանդւոց. Որ կայթս հարկա-
նէք ընդգէմ սրնգաց. [7]զորս իբրեւ
հաստատունս համարեցայք, եւ ոչ ան-
6 ցաւորս. Եւ ըմպէք պարզեալ՝ զգինի,
եւ անուշ իւղով օծանիք. եւ ոչ ցաւէ
7 ձեզ վասն բեկմանն Յովսեփու։ Վասն
այնորիկ արդ ի գերութիւն վարեսցին
[8]յիշխանութենէ բռնաւորաց, եւ հատցի
8 խնդութիւն երիվարացն Եփրեմայ։ Զի եր-
դուաւ Տէր՝ յանձն իւր, ասէ Տէր Աս-
տուած զօրութեանց՝ [9]թէ Գարշեցուցից
զամենայն հպարտութիւնս Յակոբայ, եւ
զաշխարհս նորա ատեցից՝, եւ բարձից
9 զքաղաքս նորա ամենայն բնակչօք։ Եւ
եղիցի եթէ մնասցեն տասն այր ի տան
10 մռում, եւ մնասցեն. [10]Եւ մնացորդքն
ստնուցուն զընտանիս իւրեանց, եւ ի-
ջանեն հանել զոսկերս նոցա ի տանէ
անտի. եւ ասասցեն ցայնոսիկ որք կայ-
ցեն առաջի տանն, եթէ Այլ ի՞նչ՝ մնա՞ց
11 այդր առ քեզ։ Եւ նա ասասցէ թէ Ոչ.
եւ [11]մի՛ ասասցէ թէ Լուռ լեր. [12]վասն
այնորիկ է զի ոչ անուանէին՝ զանուն
12 Տեառն։ Զի ահաւասիկ Տէր հրաման
տացէ, եւ հարցէ զմեծ ապարանսն կոր-
ծանմամբ, եւ զփոքր ապարանս պա-
տառմամբ։
13 Իցէ՞ թէ արշաւիցեն երիվարք ընդ
վէմս, կամ [13]հանգարտիցեն ի մէջ մա-
տակաց՝. զի խոտորեցէք զիրաւունս [14]ի
ցասումն եւ զպտուղ արդարութեան [15]ի
14 դառնութիւն, Եւ՝ ուրախ լինէիք յոչինչ
բանս, որք ասէիք եթէ Ո՞չ զօրութեամբ
15 մերով եղեն մեզ եղջիւրք։ Վասն այ-
դորիկ ահաւադիկ ես յարուցից ի վերայ
ձեր, տունդ Իսրայէլի, ասէ Տէր Աս-
տուած զօրութեանց, ազգ մի՝ որ նե-
ղիցեն զձեզ [16]զի մի՛ եւս մտանիցէք յԵ-
մաթ, եւ մինչեւ ի հեղեղատն արեւ-
մտից՝։

ԳԼ. Է

1 Այսպէս եցոյց ինձ Տէր [17]Տէր, եւ ահա
ծնունդ մարախոյ գայր ընդ առաւօտս,
2 եւ ահա ջորեակ մի Գոգ արքայ։ Եւ
եղիցի եթէ վախճանեսցէ ուտել՝ զխոտ
երկրին. եւ ասեմ, [18]Տէր Տէր՝, խնայեա.
քանզի ո՞վ իցէ որ կանգնեսցէ զՅակոբ,
3 զի սակաւաւոր է։ Ապաշաւեաց Տէր
ի վերայ այդորիկ. Եւ այդ եւս մի՛ լի-
ցի, ասէ Տէր։
4 Այսպէս եցոյց ինձ Տէր Տէր, եւ ահա
կոչեաց զդատաստան հրով Տէր Տէր. եւ
եկեր զանդունդս բազումս, եւ եկեր զվի-
5 ճակն։ Եւ ասեմ, Տէր Տէր, դադարեսցէ
դայդ. քանզի ո՞վ է որ յարուցանէ զՅա-
6 կոբ, զի սակաւաւոր է։ Ապաշաւեաց

[1] Եբր. զՍիքքութ (այսինքն՝ զխորանն) Մողոքայ, և զՔիուն պատկերաց ձերոց, զաստղն աստուածոց ձերոց, զոր արարէք վասն ձեր. (27) Եւ ես վարեցից զձեզ ի գերութիւն [2] Եբր. զօրութեանց [3] Եբր. որոց ի հանգստեան են ի Սիոն եւ յապահովս ի լերինն Շամրնի, նշանաւորացն իշխանաց ազգաց, եւ գայ առ նոսա [4] Եբր. Կաղնէ [5] Եբր. միթէ լա՞ւ իցեն քան զթագաւորութիւնս զայսոսիկ. միթէ [6] Եբր. հեռացուցանէք զօրն չարեաց, եւ տայք մերձենալ աթոռոյ անիրաւութեան [7] Եբր. իբրեւ զԴաւիթ հնարէք ձեզ նուագարանս երգոց, (6) Եւ ըմպէք բաժակօք [8] Եբր. ի գլուխ գերելոցն, եւ կարճեսցի խրախութիւն բազմելոցն ի գահոյս։ (8) Երդուաւ Տէր Եհովայ [9] Եբր. Գարշիմ ես զհպարտութենէն Յակոբայ, եւ ատեամ զապարանս նորա

[10] Եբր. Եւ բարձցէ զնա հօրեղբայր նորա կամ որ այրէն զնա՝ հանել զոսկրոտին ի տանէն, եւ ասասցէ ցնա որ ի տանն իցէ, եթէ Այլ ոք [11] Եբր. Նա [12] Եբր. զի չէ ի դէպ յիշել [13] Եբր. հերկիցի անդ եզամբք [14] Եբր. ի դառնութիւն [15] Եբր. յաւշինդր, (14) Ո՛վ որ [16] Եբր. ի մտից Եմաթայ մինչեւ ի հեղեղատն անապատի [17] Եբր. Եհովայ, եւ ահա արար մարախ ի սկզբան բուսանելոյ խոտոյն վերջնոյ. եւ ահա խոտ վերջին յետ հնձոց թագաւորին։ (2) Եւ եղեւ յետ ճարակելոյ ի սպառ [18] Եբր. Տէր Եհովայ, թողութիւն արա։

Տէր ի վերայ այդորիկ. Եւ այդ ևս մի՛
լիցի՝ ասէ Տէր Տէր։
7 Այսպէս եցոյց ինձ [1]Տէր Տէր. և ա-
հա այր մի կայր ի վերայ ադամանդեայ
պարսպի", և ի ձեռին իւրում [2]ադա-
8 մանդ։ Եւ ասէ ցիս Տէր, Զի՞նչ տես-
նես Ամովս. և ասեմ, [2]Ադամանդ. և
ասէ ցիս Տէր, Ահաւասիկ ես հաստա-
տեցից [2]ադամանդ ի մէջ ժողովրդեան
իմոյ Իսրայէլի, և ոչ ևս յաւելից [3]ան-
9 ցուցանել զնովաւ։ Եւ ապականեսցին
բագինք կատակութեան, և մեհեանք"
Իսրայէլի աւերեսցին. և յարեայց ի վե-
րայ տանն Յերոբովամայ սրով։
10 Եւ առաքեաց Ամասիա քուրմ Բե-
թելայ առ Յերոբովամ արքայ Իսրայէլի,
և ասէ, Ժողովս կուտէ ի վերայ քո Ա-
մովս ի մէջ տանս Իսրայէլի, և երկիրս
ոչ կարէ հանդուրժել ամենայն բանից
11 նորա. Զի այսպէս ասէ Ամովս. Յերո-
բովամ սրով վախճանեսցի, և Իսրա-
յէլ գերելով գերեսցի յերկրէ իւրմէ։
12 Եւ ասէ Ամասիա ցԱմովս, Տեսանող,
տուր տեղի, գնա յերկիրն Հրէաստանի.
անդ կեաց և անդէն մարգարէասջիր.
13 ի Բեթէլ մի՛ ևս յաւելուցուս մարգա-
րէանալ, զի սրբութիւն թագաւորի է
և տուն թագաւորութեան։
14 Պատասխանի ետ Ամովս և ասէ ցԱ-
մասիա, Ես ոչ մարգարէ էի և ոչ որդի
մարգարէի, այլ հովիւ [4]էի, և թութ"
15 քաղէի. Եւ առ զիս Տէր ի հօտից, և
ասէ ցիս Տէր, Գնա դու և մարգարեաց
ի վերայ ժողովրդեան իմում Իսրայէլի։
16 Եւ արդ լուր զպատգամս Տեառն. Դու
ասես, Մի՛ մարգարէանար ի վերայ Իս-
րայէլի, և մի՛ [5]ժողովս ժողովեր" ի վե-
17 րայ տանն [6]Յակոբու։ Վասն այդորիկ
այսպէս ասէ Տէր. Կին քո ի քաղաքիդ
պոռնկեսցի, և ուստերք քո և դստերք
քո ի սուր անկցին, և երկիրդ քո լա-
րաւ[...]ին բաժանեսցի, և դու յերկրի
պղծում վախճանեսցիս, և Իսրայէլ գե-
րելով գերեսցի յերկրէ իւրմէ։

ԳԼ. Ը.

1 Այսպէս եցոյց ինձ Տէր Տէր. և ահա
2 [7]գործի հաւորսաց"։ Եւ ասէ, Զի՞նչ տե-
սանես, Ամովս. և ասեմ, [7]Գործի հա-
ւորսաց". և ասէ ցիս Տէր, Հասեալ է
վախճան ի վերայ ժողովրդեան իմոյ Իս-
րայէլի, և ոչ ևս յաւելից [8]անցուցա-
3 նել զնովաւ։ Եւ ողբասցեն յարկք տա-
ճարին յաւուր յայնմիկ, ասէ Տէր". բա-
զումք անկանիցին, և յամենայն տե-
4 ղիս [9]արկից լռութիւն"։ Լուարուք զայս՝
որ [10]նեղէիք զաղքատն ընդ առաւօտս,
5 և զրկէիք զաղքատս յերկրէ". Եւ
ասէիք, Ե՞րբ անցցէ [11]ամիսս, և վաճառես-
ցուք", և շաբաթս՝ և բացցուք [12]զգանձս,
և առնել [13]զչափ փոքր, և մեծացու-
ցանել [14]զկշիռս, և առնել կշիռս անօ-
6 րէնս, Ստանալ արծաթով զաղքատս,
և զանանկս ի գնոյ կօշկաց, և [15]յա-
մենայն ի վաճառս մեր շահեսցուք"։
7 Երդնու Տէր ի վերայ հպարտութեանն
Յակոբու, թէ [16]ոչ մոռացայց ի սպառ
8 ամենայն զգործս ձեր"։ Եւ ի վերայ այդո-
րիկ [17]խռովեսցի երկիր," սուգ առցեն
ամենայն բնակիչք նորա. և ելցէ իբրև
գետ [18]վախճան նորա, և իջցէ" իբրև
9 գետն Եգիպտացւոց։ Եւ եղիցի յաւուր
յայնմիկ, ասէ Տէր Տէր, [19]մտցէ արե-
գակն ի միջօրէի, և խաւարեսցի յերկ-
10 րի լոյս ի տուէ"։ Եւ դարձուցից ի սուգ
զտօնս ձեր, և զամենայն երգս ձեր
յողբս, և ածից ի վերայ ամենայն հա-
սակաց քուրձ, և ի վերայ ամենայն
գլխոց կնդութիւն. և արարից զնա իբ-
րև սուգ [20]սիրելւոյ, և որոց ընդ նմայն
իցեն՝ իբրև օր ցաւոց"։
11 Ահա աւուրք գան, ասէ Տէր Տէր, և
առաքեցից սով յերկիր. ոչ սով հացի և
ոչ ծարաւ ջրոյ, այլ սով լսելոյ զբանն
12 Տեառն։ Եւ [21]խռովեսցին ջուրք" ի ծովէ
մինչև ի ծով, և ի հիւսիսոյ մինչև

[1] Եբր. Եւ ահա Տէր կայր ի վերայ որմոյ անագի (գնդակէ ուղղադրոյ) [2] Եբր. Անագ [3] Եբր. զանց առնել զնորօք։ (9) Եւ բարձունք Իսահակայ եղիցին աւերակ, և սրբութիւնք [4] Եբր. էի արջառոց, մոլաթուզ [5] Եբր. խօսիր բանս [6] Եբր. Իսահակայ

[7] Եբր. կողով պտղոյ հասունոյ [8] Եբր. զանց առնել զնորօք։ (3) Եւ եղիցին յողբ երգք տաճարին յաւուր յայնմիկ, ասէ Տէր Եհովայ [9] Եբր. արկցին լռելեայն [10] Եբր. կլանէիք զանանկն, և զրկէիք զաղքատս երկրի [11] Եբր. ամսագլուխ, և վաճառեսցուք արմտիս [12] Եբր. զցորեան [13] Եբր. զարդուն [14] Եբր. զսիկղ [15] Եբր. զխոտանն ցորենոյն վաճառեսցուք [16] Եբր. Ոչ մոռացայց ի սպառ զամենայն գործս նոցա [17] Եբր. ո՞չ շարժեսցի երկիր. և [18] Եբր. Եւ ելցէ բովանդակ, և տարցի ի բաց և ընկցի [19] Եբր. տաց մտանել արեգական ի միջօրէի, և խաւարեցուցից զերկիր ի պայծառութեան տուընջեան [20] Եբր. միամօրոյ, և վախճան նորա իբրև օր դառնութեան [21] Եբր. մոլորեսցին

յարեւելս. ընթասցին խնդրել զբանն
13 Տեառն, եւ մի՛ գտցեն։ Յաւուր յայն-
միկ [1]նուաղեսցին կոյսք գեղեցիկք եւ երի-
14 տասարդք ի ծարաւոյ, Որք երդնուին ի
[2]քաւութիւնս Շամրնի, եւ ասեն, կեն-
դանի է աստուած քո, Դան, եւ կեն-
դանի է [3]աստուած քո, Բերսաբէէ". եւ
կործանեսցին եւ մի՛ եւս կանգնեսցին։

ԳԼ. Թ

1 Տեսի զՏէր զի կայր ի վերայ սեղանոյ,
եւ ասէ, Բախեա [4]զսեղանդ, եւ շար-
ժեսցին դրանդիք, եւ կտրեա ազդ ի
գլուխս ամենեցուն. եւ զմնացորդս նո-
ցա սրով կոտորեցից, եւ մի՛ ապրեսցէ
ի նոցանէն փախուցեալն, եւ մի՛ զերծցի
2 ի նոցանէ զերծեալն։ Զի եթէ ծածկես-
ցին ի դժոխս, անտի ձեռն իմ կորզես-
ցէ զնոսա. եւ եթէ ելանիցեն յերկինս,
3 եւ անտի իջուցից զնոսա։ Եւ եթէ թա-
քիցեն ի բարձունս Կարմեղայ, եւ անտի
յուզեցից եւ առից զնոսա. եւ եթէ ըն-
կեսցին յաչաց իմոց ի խորս ծովու, եւ
անդ հրամայեցից վիշապին խայթել զնո-
4 սա. Եւ եթէ գնասցեն ի գերութիւն ա-
ռաջի թշնամեաց իւրեանց, եւ անդ
հրաման տաց սրոյ, եւ սատակեսցէ զնո-
սա. եւ հաստատեցից ի վերայ նոցա
զաչս իմ ի չարութիւն եւ ոչ ի բարու-
թիւն։
5 Եւ Տէր [5]Աստուած ամենակալ" որ մեր-
ձենայ յերկիր եւ [6]շարժէ զնա", եւ սուգ
առցեն ամենայն բնակիչք նորա. եւ ելցէ
իբրեւ զգետ [7]վախճան նորա, եւ իջցէ"
6 իբրեւ զգետն Եգիպտացւոց։ Որ շինէ
յերկինս [8]զհամբարձումն իւր, եւ զաւե-
տիս իւր" յերկիր հաստատէ. որ կոչէ
զջուրս ծովու եւ հեղու զնա ի վերայ
երեսաց երկրի. [9]Տէր ամենակալ անուն
է" նորա։
7 Ո՞չ ապաքէն իբրեւ զորդիս Եթէովպ-
պացւոց էք դուք ինձ, որդիք Իսրա-
յէլի, ասէ Տէր. ո՞չ զԻսրայէլ հանի յերկ-
րէն Եգիպտացւոց, եւ [10]զայլազգիս՝ ի
8 Գամրաց, եւ զԱսորիս՝ ի Բոթրայ": Ա-
հաւասիկ աչք [11]Տեառն ի վերայ թագա-
ւորութեանդ մեղաւորայ, եւ բարձից
զդա յերեսաց երկրէ. սակայն ի սպառ
ոչ ջնջեցից զտունն Յակոբու, ասէ Տէր։
9 Զի ահաւասիկ ես հրաման տամ, եւ
[12]ցրուեցից զձեզ ընդ ամենայն ազգս,
տունդ Իսրայէլի, զոր օրինակ հոսի"
հոսչաւ, եւ մի՛ անկցի մանրուած նորա
10 յերկիր։ Սրով վախճանեսցին ամենայն
մեղաւորք ժողովրդեան իմոյ. որք ա-
սէին, Ոչ մերձեսցին եւ ոչ հասցեն ի
վերայ մեր չարիք։
11 Յաւուր յայնմիկ կանգնեցից զխորանն
Դաւթի զանկեալն. եւ կանգնեցից զկոր-
ծանեալս նորա. եւ զյատակեալս նորա
վերստին կանգնեցից, եւ շինեցից զնա
12 ըստ աւուրցն յաւիտենից, Որպէս զի
[13]խնդրեսցեն զիս մնացորդք մարդկան,
եւ ամենայն ազգք" յորոց վերայ կոչե-
ցեալ է անուն իմ, ասէ Տէր՝ որ առնէ
13 զայս։ Ահա աւուրք գան, ասէ Տէր,
եւ [14]հասցեն կալք կթոց, եւ խաղծեսցի
խաղող ի հարաւունս, եւ բղխեսցեն լե-
րինք զքաղցրութիւն, եւ ամենայն բլ-
14 լուրք անտառախիտք եղիցին"։ Եւ դար-
ձուցից զգերութիւն ժողովրդեան իմոյ
Իսրայէլի, եւ շինեսցեն զքաղաքս ա-
պականեալս եւ բնակեսցեն. եւ տնկես-
ցեն այգիս, եւ արբցեն զգինի նոցա.
արասցեն պարտէզս, եւ կերիցեն զպտուղ
15 նոցա։ Եւ տնկեցից զնոսա յերկրի իւր-
եանց. եւ մի՛ եւս մերժեսցին յերկրէ
իւրեանց, զոր ետու ես նոցա, ասէ Տէր
Աստուած [15]ամենակալ։

---

[1]Եբր. նուաղեսցին [2]Եբր. յանցանս [3]Եբր. ճանապարհն Բերսաբէէ [4]Եբր. զխոյակդ [5]Եբր. Եհովայ զօրութեանց է [6]Եբր.՝ տայ նմա հալել [7]Եբր. Եւ ելէ՝ բովանդակ, և ընկղմեսցի [8]Եբր. զվերնայարկս իւր, և զկամար նորա [9]Եբր. Եհովայ է՝ անուն

[10]Եբր. զՓղշտացիս՝ ի Կափթորայ, եւ զԱսորիս՝ ի Կրայ [11]Եբր. Տեառն Եհովայի [12]Եբր. հոսեցից յամենայն ազգս զտունդ Իսրայէլի, զոր օրինակ հոսի ցորեան [13]Եբր. ժառանգեսցեն զմնացորդն Եդովմայ եւ զամենայն ազգս [14]Եբր. հասցէ որ հերկէն՝ առ որ հնձէ, եւ որ հարկանէ հնձան՝ առ սերմանահան, եւ կաթեցուսցեն լերինք զքաղցու, եւ ամենայն բլուրք հալեսցին [15]Եբր. քո

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ԱԲԴԻՈՒ

1 ՏԵՍԻԼ Աբդիու։ Այսպէս ասէ Տէր
[1]ցԵդովմ. Լուր լուայ ի Տեառնէ,
եւ պաշարումն առաքեաց" ի հեթա-
նոսս. Արիք եւ յարիցուք ի վերայ
2 նորա ի պատերազմ։ Ահա սակաւա-
ւորետու զքեզ յազգս, եւ անարգ-
3 եալ ես դու յոյժ։ Հպարտութիւն
սրտի քո [2]բարձրացոյց զքեզ բնա-
կել ի ծակս վիմաց. բարձրացուցանել
զբնակութիւն իւր, եւ ասել" ի սրտի
4 իւրում, Ո՞վ իջուսցէ զիս յերկիր։ Եթէ
բարձրասցիս իբրեւ զարծուի, եւ եթէ
ի մէջ աստեղաց դիցես զբոյն քո, եւ
5 անտի իջուցից զքեզ, ասէ Տէր։ Եթէ
գողոց մտեալ էր առ քեզ կամ աւազա-
կաց գիշերոյ, [3]ուր եւ էր ղօղէի՞ր", եւ
ո՞չ արդեւք գողանային բաւական իւր-
եանց. եւ եթէ կթողք մտեալ էին ի
քեզ, եւ ո՞չ եթէ ճիւ մի ոչ թողուին։
6 Զիա՞րդ քննեցաւ Եսաւ, եւ ըմբռնեցան
7 ծածուկք նորա։ Մինչեւ ի սահմանս
առաքեցին զքեզ ամենայն արք ուխտի
քո, [4]զարձան ընդդէմ քո," զօրացան ի
վերայ քո արք խաղաղութեան քո,
[5]վարանեցին զքեզ". ոչ գոյր իմաստու-
8 թիւն ի նմա։ Յաւուր յայնմիկ, ասէ
Տէր, կորուսից զիմաստութիւն յերկ-
րէն Եդովմայ, եւ զհանճար ի լեռնէն
9 Եսաւայ։ Եւ սարսեսցին պատերազմողք
[6]քո որ ի Թեմանայ". զի բարձցի մարդ
10 ի լեռնէն [7]Եսաւայ։ Վասն սպանման
եւ ամպարշտութեան եղբօրն" Յակոբայ
ծածկեսցէ զքեզ ամօթ, եւ ջնջեսցիս
11 յաւիտեան։ Յորէ յորմէ կացեր [8]հակա-
ռակ, յաւուրն գերելոյ այլազգեաց զզօ-
րութիւն նորա, եւ օտարք մտին ընդ
դրունս նորա, եւ ի վերայ Երուսաղեմի
վիճակս արկանէին, եւ [9]դու էիք"
12 իբրեւ զմի ի նոցանէն։ Եւ [10]մի՛ տեսցես
զաւուր եղբօրն քո յաւուրն օտարաց,
եւ մի՛ ոտնհար լիցիս" որդւոցն Յուդայ
յաւուրս կորստեան նոցա, եւ [11]մի՛ մե-
13 ծաբանեսցես յաւուր նեղութեան, Եւ մի՛
մտանիցես ընդ դրունս ժողովրդոց յա-
ւուր ցաւոց նոցա. եւ մի՛ տեսցես զժո-
ղովս նոցա յաւուր սատակման նոցա,
եւ մի՛ ի վերայ հարկանիցիս զօրութեան
14 նոցա յաւուր կորստեան նոցա։ Եւ մի՛
առնուցուս զկիրճս նոցա" սատակել
զապրեալս ի նոցանէ, եւ [12]մի՛ պաշա-
րեսցես" զփախստեայս նոցա յաւուր նե-
15 ղութեան նոցա։ Զի մերձ է օր Տեառն
ի վերայ ամենայն ազգաց. զոր օրինակ
արարեր դու՝ եղիցի քեզ, եւ հատու-
16 ցումն քո հատուսցի ի գլուխ քո։ Զի
զոր օրինակ արբեր ի վերայ լերին սրբու-
թեան իմոյ, արբցեն ամենայն ազգք
[13]զգինի. արբցեն եւ գիջցին", եւ եղիցին
իբրեւ չեղեալք։
17 Բայց [14]ի լեառն Սիոն եղիցի փրկու-
թիւն, եւ եղիցի սրբութիւն. եւ ժա-
ռանգեսցեն տունն Յակոբու զժառան-
18 գիչս" իւրեանց։ Եւ եղիցի տունն Յա-
կոբու հուր, եւ տունն Յովսեփու բոց,

---

[1] Եբր. Եհովայ զԵդովմայ. Լուր լուաք ի Տեառնէ, եւ հրեշտակ առաքեցաւ [2] Եբր. խաբեաց զքեզ, որ բնակեսդ ի ծակս վիմաց. բարձր է բնակութիւն նորա եւ ասէ
[3] Եբր. (զիա՞րդ ընկար.) [4] Եբր. խաբեցին զքեզ,
[5] Եբր. որ ուտէին զհաց քո՝ դնեն որոգայթ ընդ քեւ
[6] Եբր. քո, Թեման [7] Եբր. Եսաւայ՝ սպանմամբ։ (10) Վասն անիրաւութեանն որ եղեւ եղբօր քում

[8] Եբր. ի հանդիպոյ [9] Եբր. դու էիր [10] Եբր. չէր արժան քեզ հայել յաւուր եղբօր քո, յաւուր օտարութեան նորա, եւ ոտնհար լինել
[11] Եբր. մեծաբանել յաւուր նեղութեան նոցա, (13) Մտանել ընդ դրունս ժողովրդեան իմոյ յաւուր փշտաց նոցա, եւ հայել ի չարիս նոցա յաւուր թշուառութեան նոցա. եւ ոչ արկանել ձեռն ի ստացուածս նոցա յաւուր տառապանաց նոցա։ (14) Եւ ոչ կալ ի կիրճս [12] Եբր. մատնել [13] Եբր. հանապազ. արբցեն եւ կլցեն [14] Եբր. ի լերին Սիոնի եղիցին ապրեալք, և եղիցի սրբութիւն. եւ ժառանգեսցեն տունն Յակոբայ զկալուածս

եւ տունն Եսաւայ եղէգն· վառեսցին
զնոսա եւ կերիցեն զնա , եւ մի՛ մնաս-
ցէ [1]կրակայրեր տանն Եսաւայ . զի Տէր
19 խօսեցաւ ։ Եւ ժառանգեսցեն [2]Նագեբա-
ցիք զլեառն Եսաւայ , եւ [3]Սեփեղայիք
զայլազգիս". եւ ժառանգեսցեն [4]զլեառն
Եփրեմայ , եւ զդաշտն Շամրնի եւ [5]զԲե-
20 նիամին եւ զԳաղաադացին ։ Եւ զգե-
րութեան սկիզբն այն իցէ որդւոցն Իս-
րայելի , երկիր Քանանացւոց" մինչեւ ի
Սարփաթ , եւ գերութիւնն Երուսաղե-
մի [6]մինչեւ յԵփրաթա . եւ" ժառանգես-
21 ցեն զքաղաքս [7]Նագեբայ ։ Եւ ելցեն
[8]ապրեալք ի լեռնէ Սիոնի առնուլ վրէժ
ի լեռնէն Եսաւայ , եւ եղիցի Տեառն
արքայութիւն" ։

---

[1] Եբր. մնացորդ [2] Այսինքն՝ հարաւայինք [3] Այսինքն՝ դաշտայինք՝ զՓղշտացիս [4] Եբր. զդաշտն [5] Եբր. Բենիամին՝ զԳաղաադ ։ (20) Եւ գերութիւն զօրացս այսոցիկ որդւոցն Իսրայելի զՔանանացւոցն [6] Եբր. որ ի Սեփարաթ [7] Այսինքն՝ հարաւոյ [8] Եբր. փրկիչք ի լեառն Սիոն՝ դատել զլեառնն Եսաւայ. եւ արքայութիւնն եղիցի Տեառն

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ՅՈՎՆԱՆՈՒ

## ԳԼՈՒԽ Ա

1 Եւ եղեւ բան Տեառն առ Յովնան
2 որդի Ամաթեայ, եւ ասէ, Արի եւ
գնա ի Նինուէ քաղաք մեծ, եւ քարո-
զեսջիր [1]անդ, զի ել աղաղակ չարու-
3 թեան նորա առ իս։ Եւ յարեաւ Յով-
նան փախչել ի Թարսիս յերեսաց Տեառն.
էջ ի Յոպպէ եւ եգիտ նաւ որ երթայր ի
Թարսիս, ետ զինս եւ եմուտ ի նա նաւել
ընդ նոսա ի Թարսիս յերեսաց Տեառն։
4 Եւ Տէր յարոյց [2]հողմ ի ծովուն եւ ե-
ղեւ մրրիկ մեծ ի ծովուն, եւ նաւն ի
5 վտանգի կայր ի խորտակել։ Եւ երկեան
նաւավարքն [3]երկեւղ մեծ, եւ աղաղա-
կէին առ իւրաքանչիւր աստուածս" իւր.
եւ ընկեցին զկարասին որ էր ի նաւին
ի ծով անդր, զի թեթեւացուսցեն յնո-
քեանց. եւ Յովնան իջեալ ի խորշ մի
6 նաւին՝ ննջէր եւ խորդայր։ Մատեաւ
առ նա նաւապետն, եւ ասէ, Զի՞նչ է
այդ՝ զի խորդաս, արի կարդա [4]զՏէր
Աստուած քո. թերեւս ապրեցուսցէ"
զմեզ Աստուած, եւ մի՛ կորիցուք։
7 Եւ ասեն իւրաքանչիւր ցընկեր իւր,
Եկայք արկցուք վիճակս, եւ գիտաս-
ցուք, վասն ո՞յր են չարիքս այս ի վե-
րայ մեր։ Արկին վիճակս, եւ ել վիճակն
8 Յովնանու։ Եւ ասեն ցնա, Պատմեա
մեզ, վասն է՞ր են չարիքս այս մեզ.
զի՞նչ արուեստ է քո, ուստի՞ գաս [5]կամ
յո՞ երթաս", յորմէ՞ աշխարհէ ես կամ
9 յորմէ՞ ժողովրդենէ։ Ասէ ցնոսա, [6]Ծա-
ռայ Տեառն" եմ ես, եւ զՏէր Աստուած
երկնից պաշտեմ որ արար զծով եւ զցա-
10 մաք։ Եւ երկեան արքն երկեւղ մեծ,
եւ ասեն ցնա, Զի՞նչ գործեցեր զայդ.
զի գիտացին թէ յերեսաց Տեառն փա-
խուցեալ էր, քանզի պատմեաց նոցա.
11 Եւ ասեն ցնա, Զի՞նչ արասցուք քեզ,
եւ դադարեսցէ ծովս ի մէնջ. զի ծովն
տատանել եւս խռովեալ էր [5]եւ յարու-
12 ցանէր մրրիկ ի վերայ նոցա"։ Եւ ասէ
ցնոսա Յովնան, Առէք ընկեցէք զիս ի
ծովդ, եւ դադարեսցէ ի ձէնջ ծովդ. զի
գիտեմ ես եթէ վասն իմ է մրրիկս այս
մեծ ի վերայ ձեր։
13 Եւ ջանային արքն դարձուցանել զնաւն
ի ցամաք, եւ ոչ կարէին, զի ծովն եւս
քան զեւս խռովէր եւ սաստկանայր ի
14 վերայ նոցա։ Աղաղակեցին առ Տէր եւ
ասեն, Քաւ լիցի, Տէր, մի՛ կորիցուք
վասն անձին առնս այսորիկ, եւ մի՛ ա-
ծեր ի վերայ մեր արիւն արդար, զի
դու, Տէր, որպէս կամեցար եւ արա-
15 րեր։ Եւ առին զՅովնան եւ ընկեցին ի
ծովն, եւ դադարեաց ծովն ի խռովու-
16 թենէ իւրմէ։ Եւ երկեան արքն երկեւղ
մեծ ի Տեառնէ, զենին զոհս Տեառն եւ
ուխտեցին ուխտս։

## ԳԼ. Բ

1 Եւ հրաման ետ Տէր կիտին մեծի կլա-
նել զՅովնան, եւ էր Յովնան ի փոր կի-
2 տին զերիս տիւս եւ զերիս գիշերս։ Եւ
եկաց Յովնան յաղօթս առ Տէր Աստուած[7]
3 ի փորոյ կիտին, Եւ ասէ, Ի նեղու-
թեան իմում աղաղակեցի առ Տէր [5]Աս-
տուած իմ", եւ լուաւ ինձ. յորովայնէ
դժոխոց [8]աղաղակի իմում՝ լուր, Տէր."
4 ձայնի իմում։ Ընկեցեր զիս ի խորս սրտից

[1] Ոմն. ի վերայ նորա [2] Ոմն. հողմ մեծ [3] Ոմն. եւ իւրաքանչիւր աղաղակէր առ աստուած [4] Ոմն. զԱստուած քո, թերեւս յիշեսցէ [5] Յոմն. պակասէ [6] Ոմն. Եբրայեցի

[7] Ոմանք. յաւելուն, իւր [8] Ոմն. աղաղակեցի, լուար

ծովու, եւ գետք պաշարեցին զիս. ա-
մենայն զբօսանք քո եւ ալիք քո ան-
5 ցին ի վերայ իմ։ Եւ ասացի՛ թէ Մեր-
ժեցայ [1]յաչաց քոց. արդ իցէ՞ թէ՞ յա-
6 ւելից հայել ի տաճար սուրբ քո։ Հե-
ղան զինեւ ջուրք մինչեւ յոգիս, ան-
դունդք անհնարինք պաշարեցին [2]զիս.
եմուտ գլուխ իմ ընդ փապարս լերանց։
7 Իջի յերկիր, որոյ նիգք իւր աղխք յա-
ւիտենից. ելցեն յապականութենէ կեանք
8 իմ։ Առ քեզ, Տէր Աստուած իմ, ի
նուաղել հոգւոյ իմոյ կարդացի", զՏէր
յիշեցի, եւ եկեսցեն [3]աղօթք իմ ի տա-
9 ճար սուրբ քո։ Որ պահէին զունայնու-
թիւն եւ զսուտ, զողորմութիւնս
10 իւրեանց թողին։ Այլ ես ի ձայն օրհ-
նութեան [4]եւ խոստովանութեան" մա-
տուցից քեզ պատարագ, զոր [5]ուխտե-
ցի, եւ հատուցից փրկութեան Տեառն",
11 Եւ հրամայեցաւ ի Տեառնէ վիշապ
ձկանն, եւ եթուք զնա ի ցամաք։

Գլ. Գ

1 Եւ եղեւ բան Տեառն առ Յովնան երկ-
2 րորդ անգամ եւ ասէ, Արի գնա ի Նի-
նուէ քաղաք մեծ, եւ քարոզեսջիր ի
նմա ըստ [6]առաջին քարոզութեանն զոր
3 խօսեցայ" առ քեզ։ Յարեաւ Յովնան
եւ գնաց ի Նինուէ, որպէս խօսեցաւ
ընդ նմա Տէր. եւ Նինուէ էր քաղաք
մեծ Աստուծոյ, իբրեւ գնաց երից ա-
4 ւուրց ճանապարհի։ Եւ սկսաւ Յովնան
մտանել ի քաղաքն իբրեւ աւուր միոջ
գնաց ճանապարհի, քարոզեաց եւ ասէ,
Այլ եւս [7]երեք աւուրք, եւ Նինուէ կոր-
ծանեսցի։
5 Եւ հաւատացին արք Նինուէացիք յԱս-
տուած, եւ քարոզեցին պահս եւ քուրձ
զգեցան ի մեծամեծաց մինչեւ ցփոքունս
6 իւրեանց։ Եհաս բանն առ թագաւորն
Նինուէացւոց. յարեաւ յաթոռոյ իւրմէ
եւ մերկացաւ զպատմուճան իւր, զգե-
ցաւ քուրձ եւ նստաւ ի վերայ մոխրոյ։

7 Եւ քարոզեցաւ եւ պատմեցաւ ի Նի-
նուէ՝ ի թագաւորէն եւ ի մեծամեծաց
իւրոց, թէ Մարդ եւ անասուն, խաշն
եւ արջառ, մի՛ ինչ ճաշակեսցեն եւ
մի՛ ճարակեսցին եւ մի՛ ջուր արբցեն։
8 Եւ [8]զգեցան քուրձ մարդ եւ անասուն,
եւ [9]աղաղակեցին առ Աստուած սրտի
մտօք, եւ դարձան" յիւրաքանչիւր ճա-
նապարհաց իւրեանց չարաց եւ յանօ-
9 րէնութենէ որ ի ձեռս իւրեանց. Եւ
ասեն, Ո՛ գիտէ, ապաշաւեսցէ Աս-
տուած եւ դարձցի ի բարկութենէ սրտմ-
10 տութեան իւրոյ, եւ մի՛ կորիցուք։ Եւ
ետես Աստուած զգործս նոցա՝ զի դար-
ձան իւրաքանչիւր ի ճանապարհաց իւր-
եանց չարաց, եւ զղջացաւ Աստուած
ի վերայ չարեացն զոր խօսեցաւ առնել
նոցա, եւ ոչ արար։

Գլ. Դ

1 Եւ տրտմեցաւ Յովնան տրտմութիւն
2 մեծ եւ խռովեցաւ. Եւ եկաց յաղօթս
առ Տէր [4]Աստուած, եւ ասէ, Ո՛վ Տէր,
ո՞չ այս այն բանք են իմ մինչ էի ան-
դէն յերկրին իմում. վասն այնորիկ ա-
ճապարեցի փախչել ի Թարսիս, զի գի-
տէի թէ ողորմած ես դու եւ գթած,
երկայնամիտ եւ բազումողորմ, եւ զղջա-
3 նաս ի վերայ չարեաց։ Եւ արդ, Տէր
[4]Տէր, առ զոգի իմ յինէն, զի լաւ է ինձ
4 մեռանել՝ քան թէ կեալ կենդանի։ Եւ
ասէ Տէր ցՅովնան, [10]թէ Արդարեւ յո՞յժ
տրտմեալ իցես"։
5 Եւ ել Յովնան ի քաղաքէ անտի, եւ
նստաւ [11]յանդիման քաղաքին, եւ արար
իւր հովանի, եւ նստաւ ընդ հովանեաւն.
մինչեւ տեսանիցէ թէ զի՞նչ լինիցի քա-
6 ղաքին։ Եւ հրաման ետ [12]Աստուած
դդմենւոյն, եւ ել ի վերայ գլխոյն Յով-
նանու՝ լինել նմա հովանի ի վերայ գլխոյ
նորա, զովացուցանել զնա ի տառապա-
նաց իւրոց. եւ ուրախ եղեւ Յովնան ի
վերայ դդմենւոյն ուրախութիւն մեծ։
7 Եւ հրաման ետ Աստուած որդանն՝
առաւօտուն ի վաղիւ անդր, եհար զդդ-
8 մենին, եւ ցամաքեցաւ։ Եւ եղեւ ի ծա-
գել արեւուն հրամայեաց Աստուած հող-

[1] Եբր. յերեսաց աչաց քոց. սակայն [2] Եբր. զիս, կնիւնք պատեցան զգլխով իմով։ (7) Ի փապարս լերանց իջի. երկիր նգօք իւրովք շուրջ զինեւ յաւիտեան. իսկ դու հաներ ի գբոյ զկեանս իմ, Տէր Աստուած իմ։ (8) Ի նուաղել հոգւոյ իմոյ յիս [3] Եբր. առ քեզ աղօթք [4] Յեբր. պ–կ–ւէ [5] Եբր. ուխտեցի՝ հատուցից. Տեառն է փրկութիւն [6] Եբր. քարոզութեանն զոր խօսիմ [7] Եբր. քառասուն

[8] Եբր. զգեցցին [9] Եբր. աղաղակեսցեն առ Աստուած ուժգին եւ դարձցին [10] Կամ, Լա՞ւ իցէ բարկանալ քեզ [11] Եբր. յարեւելից [12] Եբր. Տէր Աստուած

մոյ խորշակի տապախառնի, եւ անկաւ
արեւն զգլխովն Յովնանու, եւ կայր ի
տարակուսի եւ քաղէր զոգի իւր. եւ
ասէր, Լաւ էր ինձ մեռանել քան զայս
կեանս իմ։
9 Եւ ասէ [1]Տէր Աստուած ցՅովնան,
[2]Թէ Արդարեւ յո՞յժ տրտմեալ իցես՞ ի
վերայ դդմենւոյն։ Եւ ասէ, [3]Յոյժ տրտ-
մեալ եմ՞ մինչեւ ցմահ։
10 Եւ ասէ Տէր, Դու խնայեցեր ի դդմե-
նին յոր ոչ եղեր ինչ աշխատ, եւ ոչ
սնուցեր զնա, որ գիշերի եղ, եւ միւս
11 գիշերի կորեաւ. Եւ ո՞չ խնայեցից ի Նի-
նուէ քաղաք մեծ, յորում բնակեալ են
աւելի քան զերկոտասան բեւր մարդիկ,
որ ոչ ծանեան զաջ եւ զահեակ իւ-
եանց, եւ անասուն բազում։

---

[1] Յնբր. դոխոսե քեզ

[2] Կամ, Լա՞ւ իցէ բարկանալ

[3] Կամ, Բարւոք է ինձ բարկանալ



# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ
# ՄԻՔԻԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 Եւ եղեւ բան Տեառն առ Միքիէ
Մորասթացի յաւուրս Յովաթամայ
եւ Աքազու եւ Եզեկիայ՝ թագաւորաց
Յուդայ, զոր եսես ի վերայ Շամրնի եւ
ի վերայ Երուսաղեմի։
2 Լուարուք, ժողովուրդք ամենայն, եւ
ունկն դիցէ երկիր եւ ամենայն բնա-
կիչք նորա. եւ եղիցի Տէր Աստուած ի
միջի ձերում ի վկայութիւն, Տէր ի տա-
3 նէ սրբոյ իւրմէ։ Զի ահաւասիկ խաղա-
ցէ[1] ի տեղւոջէ իւրմէ, իջցէ եւ [2]հասցէ
4 ի վերայ բարձանց երկրի։ Եւ [3]շարժես-
ցին լերինք ի ներքոյ նորա, եւ ձորք
[4]հալեսցին իբրեւ զմոմ առաջի հրոյ, եւ
իբրեւ զջուր հոսեալ ընդ զառիվայր։
5 Վասն ամպարշտութեանցն Յակոբու է
այն ամենայն, եւ վասն մեղաց տանն
Իսրայէլի. իսկ արդ ո՞վ է ամպարշտու-
թիւնն Յակոբայ, թէ ոչ Շամրին. եւ
ո՞վ [5]է մեղք տանն" Յուդայ, եթէ ոչ Ե-
6 րուսաղէմ։ Եւ եդից զՇամրին [6]իբրեւ
զտաղաւար մրգապահաց ագարակի", եւ
ի տունկ այգւոյ, եւ կործանեցից ի խոր-
խորատ զվէմս նորա, եւ զհիմունս նո-
7 րա մերկացուցից։ Եւ զամենայն դրօ-
շեալս նորա կոտորեսցեն, եւ զամենայն
[7]արձանս նորա այրեսցեն հրով. եւ զա-
մենայն կուռս նորա արարից յապակա-
նութիւն. զի ի կապընաց պոռնկութեան
ժողովեաց, եւ [8]ի կապընաց պոռնկու-
թեան ամփոփեաց։
8 Վասն այնորիկ կոծեսցի եւ ողբասցի,
եւ գնասցէ մերկ եւ բոկ, եւ արասցէ"
կոծ իբրեւ վիշապաց, եւ սուգ իբրեւ
9 զդստերաց [9]համբարեաց։ Զի սաստկա-
ցան հարուածք նորա. քանզի հասին
մինչեւ ի Յուդա, եւ մերձեցան մինչեւ
ի դրունս ժողովրդեան իմոյ եւ յԵրու-
10 սաղէմ։ [10]Որ ի Գէթդ էք՝ մի՛ մեծաբա-
նէք, եւ որ յԱկկարիմդ էք՝ մի՛ նորո-
գէք ի տանէ զկատակութիւն. հող ի
գլուխ լերուք ի վերայ կատակութեանց
11 ձերոց։ Բնակեալն բարւութեամբ ո՞չ ել
ի քաղաքաց իւրոց. բնակիչք Սենարայ,
կոծ արէք ի վերայ տանն որ մերձ է առ
նա. բարձցէ ի ձէնջ զհարուածս ցաւոց։
12 Ո՞վ արար սկիզբն բարեաց բնակելոյն
ի մէջ ցաւոց". զի իջին չարիք ի Տեառ-
13 նէ ի վերայ դրանցն Երուսաղեմի։ [11]Շա-
չիւն կառաց եւ դրնդիւն երիվարաց",
բնակիչդ Լաքիսայ, նա է [12]առաջնորդ
մեղաց դստեր Սիոնի. զի ի քեզ գտան
14 ամպարշտութիւնք Իսրայելի։ Վասն այ-
նորիկ [13]տացէ արձակեալս մինչեւ ի
ժառանգութիւն Գեթայ, զտունս ունա-
յնս, ի նանիր եղեն" թագաւորացն Իս-
15 րայելի. [14]Մինչեւ ի ժառանգիչս քո ած-
ցեն բնակիչքդ Լաքիսայ ժառանգու-
թեամբ". մինչեւ յՈդողամ հասցէ [15]փառք
16 դստեր Սիոնի"։ Գերծիր եւ կտրեա ի
վերայ փափուկ որդւոցն քոց, լայնեա
զխզումն քո իբրեւ զարծուոյ, զի գե-
րեցան ի քէն։

---

[1] Եբրայեցին յաւելու. Տէր [2] Եբր. կոխեսցէ [3] Եբր. հալեսցին [4] Եբր. պատառեսցին [5] Եբր. են բարձունք [6] Եբր. ի շեղջ անդոյ [7] Եբր. կուպէնս [8] Եբր. ի կապէնս պոռնկութեան դարձցին։

(8) Վասն այնորիկ կոծեցայց եւ ողբացից, եւ գնացից մերկ եւ բոկ. եւ արարից

[9] Եբր. ջայլեմանց [10] Եբր. Մի՛ պատմէք ի Գէթ, լալով մի՛ լայք. ի Բեթափրա (այսինքն ի տան փոշւոյ) թաւալեսջիր ընդ փոշի։ (11) Անց, բնակիչդ Սափիրայ (այսինքն գեղեցկութեան), մերկ ամօթալից. ոչ ել արտաքս բնակիչն Սաանայ. կոծ Բեթեսելայ առնու ի ձէնջ զօթեւան իւր։ (12) Քանզի ցաւեաց բնակիչն Մարովթայ (այսինքն դառնութեան) վասն բարւոյն [11] Եբր. Լծեա երիվար արագ ի կառս [12] Եբր. սկիզբն [13] Եբր. տացես վարձանս Մորեսեթ-գեթայ. տունք Աքզիբայ (այսինքն նանրութեան) ստեսցեն [14] Եբր. Ածից քեզ տակաւին ժառանգ, բնակիչդ Մարեսայ [15] Եբր. փառքն Իսրայելի

Գլ. Բ

1 [1]Եղեն խորհել զվաստակս, եւ գործեն
զչարիս յանկողինս իւրեանց, եւ ընդ
այգ ընդ լոյսն զնոյն կատարէին. զի
[2]ոչ ամբարձին զձեռս իւրեանց առ Աս-
2 տուած։ Ցանկային անդաց, եւ յափշ-
տակէին, [3]զորբս եւ զայրիս բռնադա-
տէին, յափշտակէին զայր եւ զտուն
նորա, զայր եւ զժառանգութիւն նորա։
3 Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր, Ա-
հաւասիկ ես խորհիմ ի վերայ ազգիդ
այդորիկ չարիս՝ ուստի ոչ համբառնայ-
ցէք զպարանոցս ձեր, եւ ոչ գնայցէք
4 կանգուն, զի ժամանակն չար է։ Յա-
ւուր յայնմիկ [4]առից ի վերայ ձեր ա-
ռակ. ողբասցեն ողբս ձայնիւ, եւ ա-
սասցեն, Թշուառութեամբ թշուառա-
ցաք. [5]մասն ժողովրդեան իմոյ լարով
չափեցաւ, եւ ոչ ոք էր որ արգելոյր
զնա դարձուցանել. անդք մեր բաժա-
5 նեցան։ Վասն այնորիկ ոչ ոք լիցէ որ
արկանիցէ լարապարն ի վիճակ յեկե-
ղեցւոջ Տեառն։
6 [6]Մի՛ լայք արտասուօք, եւ մի՛ ար-
տասուեսցեն ի վերայ այդորիկ. զի ոչ
7 մերժեսցէ զնախատինս։ Որ ասէ՝ թէ
Տուն Իսրայելի բարկացոյց զոգի Տեառն,
եթէ այս գնացք նորա իցեն, ոչ են բար-
ւոք բանք նորա ընդ նմա, եւ ոչ ու-
ղիղ գնացեալ է առաջի իմ ժողովուրդ
8 իմ։ Ի թշնամութիւն հակառակեցաւ
ընդդէմ խաղաղութեան իւրոյ. զմորթ
նորա մորթեսցեն բառնալ զյոյս, զբե-
9 կումն պատերազմի։ Վասն այնորիկ ա-
ռաջնորդք ժողովրդեան իմոյ անկցին ի
տանց փափկութեանց իւրեանց. վասն
չարութեան գնացից իւրեանց մերժե-
ցան. մերձեցարուք ի լերինս յաւի-
10 տենից։ Յոտն կաց եւ գնա, զի ոչ դոյ
քեզ այդր հանգիստ. վասն պղծութեան
ապականեցայք ապականութեամբ, հա-
լածեցայք առանց ուրուք հալածելոյ։
11 Այս սուտ յարեաւ, կաթեաց ի քեզ գի-
նի եւ արբեցութիւն, եւ եղիցի ի կա-
թուածոյ անտի` ժողովրդեանս այսմիկ։
12 Ժողովելով [7]ժողովեսցի Յակոբ ամե-
նեքումբք հանդերձ, եւ ընդունելով ըն-
կալցի զմնացորդս Իսրայելի. եւ ի միա-
սին արարից զդարձ նոցա. իբրեւ ոչ-
խարք ի նեղութեան`, իբրեւ հօտք ի
մէջ մակաղատեղի իւրեանց. [8]վարեսցին
13 ի մարդկանէ ընդ խրամ. Զի՛ առաջի
երեսաց նոցա, խրամատեսցին եւ անցցեն
ընդ դուռն, եւ ելցեն ընդ նա. ել եւ
թագաւորն առաջի երեսաց նոցա, եւ
Տէր առաջնորդեսցէ նոցա։

Գլ. Գ

1 Եւ [9]ասասցէ, Լուարուք իշխանք տանն
Յակոբայ, եւ մնացորդք` տանն Իսրա-
2 յելի։ Ո՞չ ձեր է գիտել զիրաւունս. Որ
ատեայքդ զբարիս, եւ խնդրէք զչարիս.
զերծանէք զմորթ նոցա ի նոցանէ, եւ
զմարմինս նոցա յոսկերաց իւրեանց։
3 [10]Զոր օրինակ` կերան զմարմինս ժողո-
վրդեան իմոյ, եւ զմորթ նոցա մոր-
թեցին ի նոցանէն, եւ զոսկերս նոցա
փշրեցին, եւ յօշեցին զմարմինս նոցա
իբրեւ ի կաթսայս, եւ զմիս նոցա իբ-
4 րեւ ի պուտունս, [11]Նոյնպէս աղաղակես-
ցեն առ Տէր, եւ ոչ լուիցէ նոցա, եւ
դարձուսցէ զերեսս իւր ի նոցանէն ի
ժամանակին յայնմիկ, փոխանակ զի
[12]չարչարեցին զնոսա ի գործս` իւրեանց։
5 Այսպէս ասէ Տէր ի վերայ մարգա-

[1]Եբր. Վա՜յ որոց խորհին զանօրէնութիւն [2]Եբր. է զօրութիւն ի ձեռս նոցա [3]Եբր. եւ տանց՝ եւ բռնադատէին. հարստահարէին [4]Եբր. առցեն [5]Եբր. զմասն ժողովրդեան իմոյ փոխեաց. զիա՞րդ եհան յինէն. յետս կացելոյն (կամ, փոխանակ դարձուցանելոյ յետս) բաժանեաց զանդս մեր [6]Եբր. Ասեն. Մի՛ մարգարէանայք որոց մարգարէանան. մի՛ մարգարէասցին նոցա, զի ոչ բարձցին նախատինք։ (7) Ով որ կոչիս տուն Յակոբայ, միթէ կարճեցա՞ւ ոգի Տեառն. այսոքի՞կ իցեն գործք նորա. բանք իմ չիցե՞ն բարւոք որոց գնան ուղիղ։ (8) Եւ յերեկէ (կամ, ի վաղուց) ժողովուրդ իմ յարեաւ լինել թշնամի. ի հանդերձէ անտի մերկանայք զվերարկուն յորոց անցանեն յապահովս, դարձեալք ի պատերազմէ։ (9) Զկանայս ժողովրդեան իմոյ վարէք արտաքս ի տանէ փափկութեան նոցա. ի մանկտւոյ նոցա բառնայք զփառս իմ յաւիտեան։ (10) Յոտն կացէք եւ երթայք, զի այս չէ տեղի հանգստեան. վասն զի անսուրբ է. ապականեսցէ, եւ ապականութեամբ մեծաւ։ (11) Եթէ ոք զհետ երթայ հողմոյ եւ ունայնութեան, եւ խօսեսցի սուտ. եւ ասէ՝ Մարգարէացայց քեզ վասն գինւոյ եւ ցքւոյ. նա եղիցի մարգարէ [7]Եբր. ժողովեցից, Յակոբ, բովանդակ զքեզ, գումարելով գումարեցից զմնացորդսն Իսրայելի. ի միասին եդից զնոսա իբրեւ զխաշինս Բոսրայ [8]Եբր. եղիցի աղմուկ առ ի մարդկանէ։ (13) Ել որ խրամատէն [9]Եբր. ասեմ, Արդ լուարուք, գլխաւորք Յակոբայ, և իշխանք [10]Եբր. Եւ որ [11]Եբր. Յայնժամ [12]Եբր. վատթարացուցին զգործս

ըէիցն՝ որ մոլորեցուցանեն զժողովուրդ
իմ, որ խածանեն ատամամբք իւրեանց,
եւ քարոզեն [1]նմա զխաղաղութիւն. եւ
ոչ տուաւ՟ ի բերան նոցա, եւ յարու-
6 ցին ի վերայ նորա պատերազմ: Վասն
այնորիկ գիշեր լիցի ձեզ ի տեսլենէ, եւ
նսեմասցի ձեզ յըղձութենէ. մտցէ ա-
րեգակն ի վերայ մարգարէիցն, եւ խա-
7 ւարեսցի ի վերայ նոցա տիւ: Եւ ամա-
չեսցեն երազատեսքն, եւ ծաղր կայցեն
իղձքն, եւ [2]բամբասեսցեն զնոսա ամե-
նեքեան. զի ոչ ոք իցէ որ լսիցէ նո-
8 ցա՟: Բայց ես լցայ Հոգւով զօրու-
թեամբ Տեառն, դատաստանաւ եւ զօ-
րութեամբ, պատմել Յակոբու զամ-
պարշտութիւնս նորա, եւ Իսրայէլի՝
զմեղս նորա:
9 Լուարուք զայս, առաջնորդք տանդ
Յակոբայ եւ [3]մնացորդք տանդ Իսրա-
յէլի, որ անարգէք զիրաւունս, եւ թիւրէք
10 զամենայն ուղղորդս, Որ շինէք զՍիոն
արեամբ, եւ զԵրուսաղէմ անիրաւու-
11 թեամբ: Առաջնորդք նորա կաշառօք
դատէին, եւ քահանայք նորա վարձու
տային պատասխանի, եւ մարգարէք
նորա արծաթով պատմէին զըղձու-
թիւնս, եւ ի Տէր ապաստան լինէին եւ
ասէին, Ո՞չ ապաքէն Տէր ընդ մեզ է,
եւ ոչ եկեսցէ ի վերայ մեր չարիք:
12 Վասն այդորիկ ի ձեր սակս Սիոն արօ-
րադիր լիցի, եւ Երուսաղէմ՝ [4]իբրեւ
զաւազակաց մրգապահաց՟, եւ լեառն
տաճարին՝ յանտառ մայրւոյ:

Գլ. Դ

1 Եւ եղիցի յաւուրս [5]յետինս յայտնի
լեառն Տեառն, պատրաստեալ՟ ի գլուխս
լերանց, եւ բարձրասցի ի վերայ բլրոց,
եւ փութասցին ի նա ժողովուրդք [6]բա-
2 զումք. Եւ երթիցեն ազգք բազումք եւ
ասիցեն, Եկայք ելցուք ի լեառն Տեառն
եւ ի տուն Աստուծոյ Յակոբայ, եւ
[7]ցուսցեն մեզ զճանապարհս նորա՟ եւ
գնասցուք ի շաւիղս նորա. զի ի Սիոնէ
ելցեն օրէնք, եւ բան Տեառն յԵրու-
3 սաղեմէ. Եւ դատեսցի ի մէջ ժողովր-
դոց բազմաց, եւ յանդիմանեսցէ զազգս
հզօրս մինչեւ ցհեռաւորս. եւ կոտորես-
ցեն զսուսերս իւրեանց ի խոփս, եւ
զգեղարդունս իւրեանց ի մանգաղս. ոչ
եւս առցէ ազգ յազգի վերայ սուր, եւ
4 ոչ եւս ուսանիցին պատերազմել: Եւ
հանգիցէ իւրաքանչիւր ոք ընդ որթով
իւրով եւ ընդ թզենեաւ իւրով, եւ ոչ
ոք իցէ որ զարհուրեցուսցէ. զի բե-
րան Տեառն ամենակալի խօսեցաւ զայս:
5 [8]Եթէ ամենայն ժողովուրդք գնասցեն
իւրաքանչիւր [9]ի ճանապարհս իւրեանց,
այլ մեք գնասցուք յանուն Տեառն Աս-
տուծոյ մերոյ յաւիտեանս եւ առ յապայ:
6 Յաւուր յայնմիկ, ասէ Տէր, ժողովե-
ցից [10]զմանրեալն, եւ զհեռացեալն ըն-
7 կալայց, եւ զորս [11]մերժեցին. Եւ արա-
րից [12]զբեկեալն ի զաւակ, եւ զմանրեալն՟
յազգ հզօր. եւ թագաւորեսցէ Տէր ի
վերայ նոցա ի լերինն Սիոնի յայսմհետէ
8 մինչեւ յաւիտեան: Եւ դու, աշտարակ
հօտի, [13]մթին դուստր՟ Սիոնի, ի վերայ
քո եկեսցէ եւ մտցէ առաջին իշխանու-
թիւն թագաւորութեան [14]ի Բաբելոնէ
դստեր Երուսաղեմի:
9 Եւ արդ ընդէ՞ր [15]ծանեար զչար՟. մի թէ
թագաւոր ո՞չ գոյր քո, կամ թէ խոր-
հուրդն քո կորեա՞ւ, զի սաստկացան
10 երկունք քո իբրեւ զծննդականի: Երկ-
նեա եւ [16]զօրացիր, եւ մերձեաց՟, դուստր
Սիոնի, իբրեւ ծննդական. զի այժմ
ելցես ի քաղաքէ, եւ [17]բնակեսցուցից
զքեզ՟ ի դաշտի, եւ հասցես մինչեւ ի
Բաբելոն. [18]եւ անտի փրկեսցէ զքեզ՟
եւ անտի ապրեցուսցէ զքեզ Տէր [18]Աս-
տուած քո՟ ի ձեռաց թշնամեաց քոց.
11 Եւ արդ ժողովեցան ի վերայ քո ազգք
բազումք, որք ասէին, [19]Եկայք ստնհար
լիցուք՟, եւ տեսցեն աչք մեր ի վերայ
12 Սիոնի: Եւ նոքա ոչ գիտացին զխոր-
հուրդ Տեառն, եւ ոչ ի միտ առին զկամս
նորա. զի ժողովեաց զնոսա իբրեւ զօ-
13 րան ի կալ: Կանգնեաց եւ կաս զնոսա,
դուստր Սիոնի, զի զեղջեւրս քո արա-
րից երկաթիս, եւ զկճղակս քո պղնձիս,

[1] Եբր. խաղաղութիւն, եւ որոյ չէր տուեալ [2] Եբր. ծածկեսցեն զշրթունս իւրեանց ամենեքեան, զի չէք պատասխանի Աստուծոյ [3] Եբր. իշխանք [4] Եբր. եղիցի կոյտ աւերակաց [5] Եբր. յետինս, եղիցի լեառն տան Տեառն հաստատեալ [6] Եբր. իբրեւ զհեղեղ [7] Եբր. ցուսցէ մեզ զճանապարհս իւր

[8] Եբր. Զի [9] Եբր. յանուն աստուածոյն [10] Եբր. զկաղն [11] Եբր. չարչարեցի [12] Եբր. զկաղն ի մնացորդ, եւ զհեռացեալն [13] Եբր. բլուր դստեր [14] Յեբր. պակասէ [15] Եբր. բառնաս զաղաղակ [16] Եբր. հեծեծեա [17] Եբր. բնակեսցես [18] Եբր. անդ փրկեսցիս, [19] Եբր. Պղծեսցի

եւ մանրեսցես զժողովուրդս բազումս,
եւ [1]փշրեսցես նոքօք զազգս. եւ մա-
տուսցես Տեառն զբազմութիւն նոցա,
եւ զզօրութիւն նոցա Տեառն՝՝ ամենայն
երկրի։

## Գլ. Ե

1 Արդ [2]պաշարեսցի դուստրն ցանկով՝՝, զի
նեղութիւն կարգեաց ի վերայ [3]ձեր. գաւա-
զանաւ հարցեն զծնօտս [4]ազգաց Իսրայէլի։
2 Եւ դու, Բեթղեհէմ [5]տուն Եփրաթայ՝՝,
սակաւաւոր իցես լինել ի հազարաւորս
Յուդայ, ի քէն ելցէ ինձ լինել իշխան
Իսրայէլի, եւ ելք նորա [6]ի սկզբանէ
3 աւուրց աշխարհի՝՝։ Վասն այնորիկ տա-
ցէ զնոսա մինչեւ ի ժամանակ [7]ծննդա-
կանին. ծնցի՝՝, եւ մնացորդք եղբարց
նորա դարձցին առ որդիսն Իսրայէլի։
4 Եւ կացցէ, եւ [8]տեսցէ եւ հովուեսցէ
հօտի իւրոյ զօրութեամբ Տեառն, եւ
ի փառս անուան Տեառն Աստուծոյ
իւրեանց հաստատեսցին՝՝. զի այժմ մե-
5 ծասցի մինչեւ ի ծագս երկրի։ Եւ եղի-
ցի [9]նմա խաղաղութիւն. յորժամ ե-
կեսցէ Ասորեստանեայն յերկիր [10]ձեր, եւ
յորժամ հասցէ յաշխարհ ձեր, յարուս-
ցէ՝՝ ի վերայ նորա եւթն հովիւ եւ ութ
6 վարիչ մարդկան։ Եւ [11]հովուեսցեն զԱ-
սորեստանեայն՝՝ սրով, եւ զերկիրն Նեբ-
րովթայ [12]ի սպառնիչս իւրում. եւ փր-
կեսցէ զքեզ՝՝ յԱսորեստանեայն՝ յորժամ
եկեսցէ յերկիր [13]ձեր, եւ յորժամ հասցէ
ի վերայ սահմանաց ձերոց՝՝։
7 Եւ եղիցի մնացորդն Յակոբայ ի հե-
թանոսս, ի մէջ ազգաց բազմաց՝ իբրեւ
ցօղ անկեալ ի Տեառնէ, եւ իբրեւ
կաթիլ ի վերայ արգոյ, [14]որպէս զի մի՛
ժողովեսցի եւ մի՛ մի, եւ մի՛ մնասցէ
8 ի մէջ՝՝ որդւոց մարդկան։ Եւ եղիցին
մնացորդքն Յակոբայ ի հեթանոսս, ի
մէջ ազգաց բազմաց իբրեւ զառեւծ ի
մէջ խաշին յանտառի, եւ իբրեւ զկո-
րիւն առիւծու ի մէջ հօտից խաշանց.
զոր օրինակ յորժամ անցեալ զատու-
ցանիցէ եւ յափշտակիցէ, եւ ոչ ոք իցէ
9 որ թափիցէ։ Բարձրասցի ձեռն քո ի
վերայ նեղչաց քոց, եւ ամենայն թշնա-
միք քո սատակեսցին։
10 Եւ եղիցի յաւուր յայնմիկ, ասէ Տէր,
սատակեցից զերիվարս քո ի միջոյ քում-
11 մէ, եւ կորուսից զկառս քո. Եւ սատա-
կեցից զքաղաքս երկրի քո, եւ բարձից
զամենայն ամուրս քո. եւ բարձից զա-
մենայն կախարդութիւնս քո ի ձեռաց
քոց, եւ հարցուկք ոչ եղիցին ի քեզ։
12 Եւ ջնջեցից զդրօշեալս քո եւ զարձանս
քո ի միջոյ քումմէ, եւ ոչ եւս երկիր
13 պագցես գործոց ձեռաց քոց։ Եւ կոտո-
րեցից [15]զանտառս ի միջոյ քումմէ, եւ
14 ապականեցից զքաղաքս քո։ Եւ արա-
րից բարկութեամբ եւ սրտմտութեամբ
վրէժխնդրութիւն ի մէջ ազգաց, փոխա-
նակ զի ոչ լուան։

## Գլ. Զ

1 Լուարուք զայս զոր ասաց Տէր. Արի
եւ դատեաց [16]ընդ լերինս՝՝, եւ բլուրք
2 լուիցեն ձայնի քում։ Լուարուք, [17]բլուրք,
զդատաստան Տեառն, եւ ձորք եւ
հիմունք՝՝ երկրի. զի դատաստան է
Տեառն ընդ ժողովրդեան իւրում, եւ ընդ
Իսրայէլի յանդիմանեսցի։
3 Ժողովուրդ իմ, զի՞ արարի քեզ, [18]կամ
ի՞ւ տրտմեցուցի զքեզ՝՝ կամ ի՞ւ նեղեցի
4 զքեզ. տուր ինձ պատասխանի։ Փոխա-
նակ զի հանի զքեզ յերկրէն Եգիպտաց-
ւոց, եւ ի տանէ ծառայութեան փրկեցի
զքեզ, եւ առաքեցի առաջի քո զՄով-
5 սէս եւ զԱհարոն եւ զՄարիամ։ Ժողո-
վուրդ իմ, յիշեա զինչ խորհեցաւ վասն
քո Բաղակ թագաւոր Մովաբացւոց, եւ
զինչ ետ նմա պատասխանի Բաղաամ
որդի Բէովրայ, [19]ի վիճակացն մինչեւ
ցԳաղգաղ. զի [20]ծանիցի արդարութիւն՝՝
Տեառն։
6 Ի՞ւ կանխեցից առ Տէր, [21]ապաւինե-
ցայց յԱստուած իմ՝՝ բարձրեալ. եթէ

---

[1] Եբր. Նուիրեսցես Տեառն զշահս նոցա եւ զզօրութիւն նոցա առ Տէր [2] Եբր. գունդ կազմեա, դուստր գնդի [3] Եբր. մեր [4] Եբր. դատաւորին [5] Եբր. Եփրաթա, [6] Եբր. ի վաղուց անտի յաւուրց յաւիտենից [7] Եբր. ծնանելոյ ծննդականին [8] Եբր. հովուեսցէ ի զօրութեան Տեառն և ի մեծվայելչութեան անուան Տեառն Աստուծոյ իւրոյ, եւ բնակեսցեն նոքա [9] Եբր. նա [10] Եբր. մեր, եւ յորժամ կոխեսցէ յապարանս մեր, եւ յարուսցուք [11] Եբր. արածեսցեն զերկիր Ասորեստանեայն [12] Եբր. ի մուտս իւր. եւ նա փրկեսցէ զմեզ [13] Եբր. մեր. եւ յորժամ կոխեսցէ ի սահմանս մեր [14] Եբր. որ ոչ սպասէ առն, և ոչ կայ մնայ

[15] Տես Ելից ԼԴ. 13։ [16] Իմա՝ առաջի լերանց [17] Եբր. լերինք, զդատաստան Տեառն, եւ հիմունք զօրութեան [18] Եբր. [illegible] [19] Եբր. յէջս զինչ եղեւ ի Սատիմայ [20] Եբր. գիտասցես զարդարութիւն [21] Եբր. խոնարհեցայց առ Աստուած

կանխեսցի՞ց առ նա ողջակիզօք եւ որ-
7 թովք տարեւորօք. Եթէ ի՞ցէ՝ ընկալցի՞
Տէր ընդ հազարաւորս խոյոց, կամ ընդ
բիւրաւորս [1]նոխազաց պարարտաց՞. եթէ
տա՞ց զանդրանիկս իմ վասն ամպարշտու-
թեանց[2], եւ զպտուղ միջոյ իմոյ վասն
մեղաց անձին իմոյ։
8 Պատմեցաւ քեզ, ո՛վ մարդ, զի՛նչ է
բարի. կամ զի՞նչ խնդրէ ի քէն Տէր,
բայց առնել զիրաւունս, եւ սիրել զո-
ղորմութիւն, եւ [3]պատրաստ լինել եր-
թալոյ զհետ Տեառն Աստուծոյ քո՞։
9 Ձայն Տեառն ի վերայ քաղաքի կո-
չեսցի, եւ [4]ապրեցուսցէ զերկիւղածս
անուան նորա։ Լուր, ազգ, ո՞ հան-
10 դերձեսցէ զքաղաք, եթէ ոչ հուր, Եւ
տուն անօրինի որ գանձէ զգանձս անօ-
րէնս, եւ հպարտութեամբ անիրաւու-
11 թեան. Եւ ի՞ցէ թէ արդարասցի կշ-
ռովք անօրէնն, եւ պայուսակաւ կշռոց
12 նենգութեան. Ուստի զտունս իւրեանց
լցին ամպարշտութեամբ՞. եւ բնակիչք
նորա խօսեցան անիրաւութիւն, եւ լե-
զուք նոցա մեծաբանեցին ի բերանս
13 իւրեանց։ Եւ ես [5]հարի զքեզ ապակա-
14 նութեամբ՞ վասն մեղաց քոց։ Դու
կերիցես եւ մի՛ յագեսցիս. եւ [6]մերժեցի
զքեզ, եւ ըմբռնեսցիս եւ մի՛ ապրես-
ցիս. եւ որ միանգամ ապրեսցին՝ ի սուր
15 մատնեսցին՞։ Դու սերմանեսցես, եւ մի՛
հնձեսցես, դու կթեսցես ձէթ, եւ մի՛
օծցիս իւղով, եւ գինի՝ եւ մի՛ արբցես
16 գինի։ [7]Եւ ապականեսցին անօրէնք ժո-
ղովրդեան իմոյ՞, եւ ամենայն գործք
տանն Աքաաբու. եւ գնայէք ըստ
խորհրդոց նոցա. զի մատնեցից զձեզ
յապականութիւն, եւ զբնակիչս քո ի
շչիւն, եւ զնախատինս [8]ժողովրդոց
ընկալջիք։

## Գլ. Է

1 Վա՜յ ինձ, զի եղէ իբրեւ զհասկաքաղ
ի հունձս, եւ իբրեւ զճռաքաղ ի կութս.
եւ ոչ գոյր [9]ողկոյզ յառաջին բերոյն
2 ուտել։ Վա՜յ անձին իմում, զի
կորեաւ՞ երկիւղած յերկրէ, եւ ոչ գոյ
ուղիղ ի մէջ մարդկան. ամենեքին
[10]արեամբ դատին՞, իւրաքանչիւր զըն-
3 կեր իւր [11]նեղելով նեղեն՞։ Զձեռս իւր-
եանց պատրաստեն ի չար. իշխանն
խնդրէ, եւ [12]դատաւորն խօսի բանս
խաղաղութեան ըստ ցանկութեան ան-
4 ձին իւրոյ. Եւ հանից զբարութիւն նո-
ցա իբրեւ զցեց՝ որ ուտէ եւ շրջի ի
վերայ կանոնի յաւուր այցելութեան.
վա՜յ վա՜յ, վրէժխնդրութիւնք քո եկին
5 հասին՞. արդ եղիցին լալիք նոցա։ Մի՛
հաւատայք սիրելեաց, եւ մի՛ յուսայք
[13]յիշխանս. եւ յամկողնակցէ քումմէ
6 զգոյշ լեր պատմել ինչ նմա։ Զի որդի
անարգէ զհայր, եւ դուստր յարիցէ ի
վերայ մօր իւրոյ, նու ի վերայ սկեսու-
րի իւրոյ, եւ թշնամիք առն՝ ընտանիք
իւր։
7 Այլ ես Տեառն ակն կալայց, սպասե-
ցից Աստուծոյ փրկչի իմոյ, եւ լուիցէ
8 ինձ [14]Տէր Աստուած իմ։ Մի՛ ոտնհար
լինիր ինձ, թշնամի իմ, զի գլորեցայ,
միւանգամ կանգնեցայց. զի թէ նստայց
9 ի խաւարի՝ Տէր է իմ լոյս։ Բարկու-
թեան Տեառն համբերից, զի մեղայ
նմա, մինչեւ արդարացուսցէ զդատաս-
տան իմ, եւ արասցէ ինձ իրաւունս,
եւ հանցէ զիս ի լոյս, եւ տեսից զար-
10 դարութիւն նորա։ Եւ տեսցէ թշնամին
իմ, եւ ծածկեսցէ զնա ամօթ, որ ասէր
ցիս՝ Ո՞ւր է Տէր Աստուած քո. աչք իմ
տեսցեն ի նա. արդ եղիցի կոխան իբ-
րեւ զկաւ ի ճանապարհի։
11 [15]Օր ծեփոյ աղիւսոյ, եւ ջնջումն քո
եղիցի օրն այն. մերժեսցէ զիրաւունս
12 քո օրն այն։ Եւ քաղաքք քո եկեսցեն

---

[1] Ոմնք. հեղեղաց իւղոյ [2] Ոմնք. յաղագս յանցանաց իմոց [3] Ոմնք. խոնարհեցուցանել զանձն գնալ ընդ Աստուծոյ քում [4] Ոմնք. այր իմաստուն տեսցէ զանուն քո. լուարուք գաւազանի, եւ որում հանդերձէն զնա։ (10) Տակաւին կայցէ՞ ի տան ամպարշտի գանձ ամպարշտութեան, եւ արգու տակառ որ պիղծ է։ (11) Եղիցի՞ն ինձ սուրբ կշիռք անիրաւութեան, եւ պայուսակ կշռոց նենգութեան. (12) Որոյ մեծատունք լի են յափշտակութեամբ [5] Ոմնք. հարից զքեզ խօթութեամբ, ապականեցից զքեզ [6] Ոմնք. բարձցի քո ի փորի քում. եւ ըմբռնեսցես, այլ մի՛ ապրեցուսցես, եւ զոր ապրեցուցերդ՝ մատնեցից սրոյ [7] Ոմնք. Զի պահին օրէնք Ամրեայ [8] Ոմնք. ժողովրդեան իմոյ

[9] Ոմնք. ողկոյզ յուտել. երախայրիսն ցանկացաւ անձն իմ։ (2) Կորեաւ [10] Ոմնք. դարանին արեան [11] Ոմնք. որսայ որոգայթիւ [12] Ոմնք. որ դատին՝ վասն հատուցման, եւ որ մեծն է՝ խօսի ըստ ցանկութեան անձին իւրոյ. այսպէս թիւրեն զայն։ (4) Ազնուագոյնն նոցա իբրեւ զփուշ. և ուղիղն՝ քան զցանգ փշեղէն. յաւուր դիտաց քոց՝ այցելութիւն քո եկն [13] Կամ, ի մտերիմս [14] Յոմնս պակասէ [15] Ոմնք. Յաւուր շինութեան պարսպաց քոց, յաւուր յայնմիկ հեռասցին օրէնք։ (12) Յաւուր յայնմիկ եկեսցեն առ քեզ

ի պաշարումն եւ յաւուր Աստրեստան-
եայց. եւ քաղաքք քո ամուրք՝ ի բա-
ժինս, ի Ծուրայ՟ մինչեւ ցԳետն, եւ ի
ծովէ մինչեւ ի ծով, եւ ի լեռնէ մին-
13 չեւ ցլեառն։ Եւ եղիցի երկիրն յապա-
կանութիւն համդերձ բնակչօքն իւրովք
ի պտղոյ գործոց նոցա։
14 Արածեա զժողովուրդ քո գաւազա-
նաւ [1]ցեղիցդ քոց, եւ զխաշինս՟ ժա-
ռանգութեան քո, որ բնակեալ են առան-
ձինն յանտառի ի մէջ Կարմեղայ, արա-
ծեսցին ի Բասան, եւ ի Գաղաադ ըստ
15 աւուրցն յաւիտենից։ Ըստ աւուրց ելիցն
քոց յերկրէն Եգիպտացւոց ցուցից նոցա
16 սքանչելիս։ Տեսցեն հեթանոսք եւ ա-
մաչեսցեն յամենայն զօրութենէ իւր-
եանց. զիցեն զձեռս ի վերայ բերանոյ
իւրեանց, եւ ականջք նոցա խլասցին։

յԱստրեստանէ անտի, եւ ի քաղաքաց ամ-
րացելոց (կամ, յԵգիպտոսէ) եւ յամրութենէ,
(կամ, յԵգիպտոսէ) [1]Եբր. քով. խաշինք

17 Լիզեսցեն զհող իբրեւ [2]օձք որ սողին
ընդ երկիր, խռովեսցին ի պաշարման
իւրեանց, եւ՟ ի Տեառնէ Աստուծոյ
մերմէ զարհուրեսցին, եւ երկիցեն ի քէն։
18 Ո՞վ է Աստուած իբրեւ զքեզ որ բառ-
նայ զանօրէնութիւնս, եւ զանց առնէ
զանիրաւութեամբք մնացորդաց [3]երկրի
ժառանգութեան իւրոյ, [4]եւ ոչ ունի ի
վկայութիւն՟ զբարկութիւն իւր, զի
19 կամեցող ողորմութեան է։ Դարձցի եւ
գթասցի ի մեզ, [5]եւ ընկղմեսցէ զմեղս
մեր. եւ ընկեսցէ՟ ի խորս ծովու զա-
20 մենայն զանօրէնութիւնս [6]մեր։ Տացէ՟
ճշմարտութիւն Յակոբայ, ողորմու-
թիւն՝ Աբրահամու, [7]որպէս երդուաւ՟
հարցն մերոց ըստ աւուրցն առաջնոց։

[2]Եբր. զօձ, իբրեւ զզեռունս դողասցեն ի թա-
քստենէ իւրեանց. [3]Եբր. [illegible] [4]Եբր.
ոչ պահէ յաւիտեան [5]Եբր. նուաճեսցէ զմեղս
մեր. եւ ընկեսցես [6]Եբր. նոցա։ (20) Տացես
[7]Եբր. զոր երդուար

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ՆԱՒՈՒՄԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 [1]ՏԵՍԱԾ Նինուէի։ Գիրք տեսլեան
Նաւումայ Եղկեսացւոյ։
2 Աստուած նախանձոտ եւ վրէժխնդիր
Տէր. վրէժխնդիր է Տէր [2]բարկութեամբ.
եւ խնդրէ Տէր վրէժ ի հակառակորդաց
իւրոց, եւ [3]բառնայ ինքն զթշնամիս իւր"։
3 Տէր երկայնամիտ, եւ մեծ է զօրու-
թիւն նորա, եւ արդարացուցանելով ոչ
[4]արդարացուցանէ Տէր. վախճանաւ եւ
շարժմամբ է ճանապարհ նորա, հողմ
երկիւար նորա", եւ ամպք փոշի ոտից
4 նորա։ Սաստէ ծովու, եւ ցամաքեցու-
ցանէ զնա, եւ զամենայն գետս աւերէ.
նուազեաց Բասանացին եւ Կարմեղոս,
եւ [5]ամենայն ծաղիկք Լիբանանու սպա-
5 կասեցին։ Լերինք շարժեցան ի նմանէ,
եւ բլուրք սասանեցան. խախտեցաւ եր-
կիր յերեսաց նորա, եւ [6]համօրէն ամե-
6 նայն բնակիչք նորա"։ Առաջի բարկու-
թեան նորա ո՞ հանդարտեսցէ, եւ ո՞
կայցէ ընդդէմ բարկութեան սրտմտու-
թեան նորա. սրտմտութիւն նորա [7]հալէ
զիշխանութիւնս", եւ վէմք խորտակե-
ցան ի նմանէ։
7 Քաղցր է Տէր [8]որոց սպասեն նմա"
յաւուր նեղութեան, եւ ճանաչէ [9]զեր-
8 կիւղածս իւր։ Եւ հեղեղաւ ճանապար-
հաց արասցէ վախճան յարուցելոց ի
վերայ", եւ զթշնամիս նորա խաւար
9 հալածեսցէ։ Զի՞նչ խորհիք զՏեառնէ.
կատարած ինքն արասցէ. եւ ոչ [10]խնդ-
րեսցէ կրկին զնոյն վրէժխնդրութիւն ի
10 նեղութեան։ Զի մինչեւ ի հիմն իւր-
եանց խոպանասցին. իբրեւ զգեղձ պատ-
եալ կերիցի, եւ" իբրեւ զեղէգն լի
11 երաշտութեամբ։ Ի քէն [11]ելցէ խորհուրդ
զՏեառնէ, չարիս խորհել հակառակու-
12 թեամբ"։ Այսպէս ասէ Տէր. [12]Ի վերայ
իշխանաց ջուրց բազմաց՝ այնպէս զա-
տուսցին, եւ լուր քո ոչ եւս լուիցի"։
13 Եւ արդ խորտակեցից [13]զգաւազան նորա
14 ի քէն, եւ զկապանս քո խզեցից։ Եւ
պատուիրեսցէ վասն քո Տէր, եւ ոչ
եւս սերմանեսցի յանուանէ քումմէ. ի
տանէ Աստուծոյ քո ջնջեցից զդրօշ-
եալս, եւ զձուլածոյսն արարից ի գե-
15 րեզման [14]քեզ։ Զի ահա երագ են" ի
վերայ լերանց ոտք աւետարանչին,
եւ որ պատմէ զխաղաղութիւն. տօնեա
զտօնս քո, Յուդա, հատո զուխտս
քո. զի ոչ եւս [15]յաւելցին անցանել ի
հնանալ. վախճանեցաւ, մաշեցաւ եւ
բարձաւ"։

## ԳԼ. Բ

1 [16]Բանդի ել որ փչէ ընդ երեսս քո,
եւ ապրեցուցանէ ի նեղութենէ". դիտեա

---

[1] Եբր. Պատգամ [2] Եբր. և տէր բարկութեան [3] Եբր. քինախնդիր թշնամեաց իւրոց [4] Եբր. արդարացուցանէ զյանցաւորն. մրրկաւ եւ փոթորկաւ է ճանապարհ Տեառն [5] Եբր. [illegible] [6] Եբր. աշխարհ և ամենայն բնակիչք որ ի նմա [7] Եբր. հեղու իբրեւ զհուր [8] Եբր. զօրութիւն [9] Եբր. զորս ապաւինին ի նա։ (8) Սակայն հեղեղաւ յորդելով աւերեսցէ ի սպառ զտեղի նորա

[10] Եբր. յարիցէ միւսանգամ նեղութիւն։ (10) Զի թէպէտեւ լիցեն պատատեալ իբրեւ փուշ, եւ իբրեւ արբեալ ըմպելեօք իւրեանց, ծախեսցին [11] Եբր. ել որ խորհի չարիս զՏեառնէ, խորհրդական անօրէն [12] Եբր. Թէպէտեւ իցեն հզօրք եւ բազումք, բեկցին յանցանել նորա. նեղել նեղեցի զքեզ, այլ եւս ոչ նեղեցից զքեզ [13] Եբր. զլուծ [14] Եբր. քեզ, զի արհամարհեալ եղեր։ (15) Ահա [15] Եբր. յաւելցի անցանել ընդ քեզ անօրէն. խորտակեցաւ ի սպառ [16] Եբր. Որ խորտակէն՝ ել ընդդէմ երեսաց քոց. պահեա զամրութիւն

զճանապարհ, պնդեա զմէջ, զօրացիր
2 զօրութեամբ յոյժ։ Զի դարձոյց Տէր
[1]զհպարտութիւնն Յակոբայ իբրեւ
[1]զհպարտութիւնն Իսրայելի. զի թօթա-
փելով թօթափեցին զնոսա, եւ զուռս
3 նոցա ապականեցին. [2]Զզէն զօրու-
թեան նորա ի մարդկանէ, զարս հզօրս
որ խաղային ընդ հուր. երասանակք կա-
ռաց նոցա" յաւուր պատրաստութեան
4 նորա. [3]Խռովեսցին հեծեալք ի ճանա-
պարհս, եւ խառնեսցին ի հրապարակս".
տեսիլ նոցա իբրեւ զղամբարաց հրոյ,
եւ իբրեւ զփայլակն յայսկոյս եւ յայն-
կոյս ընթանան։
5 [4]Յիշեսցեն մեծամեծք նորա, եւ փախի-
ցեն ի տուէ, եւ կասեսցին ի ճանա-
պարհս իւրեանց. եւ փութասցին ի
պարիսպս, եւ պատրաստեսցեն զպա-
6 տուարս իւրեանց։ Դրունք քաղաքաց"
բացան, եւ կործանեցան արքունիք։
7 Եւ [5]սատացուածք յայտնեցան. ինքն ե-
լանէր, եւ նաժիշտք իւր տաղջի պային,
իբրեւ զաղաւնիս ի սրտից իւրեանց
8 մինչեւ։ Եւ ջուրք Նինուէի իբրեւ զջուրս
աւազանի. եւ նոքա փախեան ի քէն,
եւ ոչ կացին զանգի", եւ ոչ ոք էր որ
9 հայէր։ [6]Յափշտակէին զարծաթ, յա-
փշտակէին զոսկի, եւ ոչ գոյր չափ
զարդու նորա, ծանրացան քան զամե-
10 նայն սպասք նորա ցանկալիք։ Թօթա-
փումն եւ ձգտումն" եւ սասանումն սրտի
եւ լքումն ծնգաց, եւ երկունք ի վերայ
ամենայն միջոյ, եւ երեսք ամենեցուն
[7]իբրեւ զայրեցած պուտան"։
11 Ո՞ւր են մայրիք առիւծուցն եւ [8]արօտ
կորեանց նոցա, ուր չոգաւ առիւծն
մտանել", կորիւն առիւծուն, եւ ոչ ոք
12 էր որ զարհուրեցուցանէր։ Առիւծ որսա-
ցաւ բաւական կորեանց իւրոց, եւ
հեղձոյց կորեանց իւրոց, եւ ելից զմայ-
րիս իւր որսով, եւ զբնակութիւն իւր
13 յափշտակութեամբ։ Ահաւասիկ ես ի
վերայ քո, ասէ Տէր ամենակալ, եւ այ-
րեցից ծխով [9]զբազմութիւն քո", եւ
կերիցէ սուր զառիւծս քո. եւ բարձից
յերկրէ զորս քո, եւ ոչ եւս լուիցին
[10]զգործք քո"։

## Գլ. Գ

1 Ո՜ քաղաք արեանց, ամենեւին սուտ,
լի անիրաւութեամբ, [11]որսոյ զննեսցի
2 որսով"։ Ձայն հարուածոց, ձայն շարժ-
ման անուոյ, [12]շաչիւն կառաց, շահա-
3 տակիւն հեծելոց, փայլիւն զինու, Շո-
ղալ սուսերի, թաւալագլոր խաղալ վի-
րաւորաց, եւ ոչ գոյր չափ ազգաց նո-
րա. եւ տկարասցին ի մարմինս իւրեանց՝
4 ի բազում պոռնկութենէ։ Պոռնիկ գե-
ղապանծ, գլուխ կախարդաց", որ վա-
ճառէր զազգս ի պոռնկութեան իւրում,
5 եւ զժողովս կախարդանօք իւրովք։ Ահա-
ւասիկ ես ի վերայ քո, ասէ Տէր [13]Ա-
տուած ամենակալ. եւ յայտնեցից զյե-
տուսս քո, եւ արկից զերեսօք քովք.
եւ ցուցից ազգաց զամօթ քո, եւ թա-
6 գաւորութեանց զանարգանս քո։ Եւ
ընկեցից ի վերայ քո զպղծութիւնս [13]եւ
զաղտեղութիւնս քո", եւ արարից զքեզ
7 [14]խայտառակ։ Եւ եղիցի ամենայն որ
տեսանիցէ զքեզ՝ [15]իջանիցէ եւ ա-
սասցէ, Եղո՜ւկ դու," Նինուէ, ո՞վ
իցէ որ հեծիցէ վասն [16]քո. ուստի՞ խնդ-
րեսցուք քեզ մխիթարութիւն։
8 [17]Պատրաստեա բաժին, կազմեա ջնար,
վիճակդ Ամոնայ. որ բնակեալ է" ի

[1] Եբր. զվսեմչութիւն [2] Եբր. Վահան հզօրաց նորա կարմրացաւ, արք զօրութեան զգեցան ծիրանի. ի հուր պողովատիկ կառք [3] Եբր. և նիզակք շողշողեն։(4) Ի փողոցս կատաղեսցին կառք. ի հրապարակս հարցին ընդ միմեանս [4] Եբր. Յիշեսցէ զհզօրս իւր. գլորեսցին նոքա ի գնալն իւրեանց, փութասցին ի պարիսպ նորա, և պատրաստեսցի պատսպարան։(6) Դրունք գետոց [5] Եբր. սահմանեալ է, վարեցաւ ի գերութիւն, տարաւ ի վեր, եւ նաժիշտք նորա մնչեն ի բարբառ աղաւնեաց բաղխեալ զկուրծս իւրեանց։ (8) Եւ Նինուէ իբրեւ զաւազան ջրոյ էր ի վաղուց անտի. և նոքա փախչին, Կացէք, կացէք, գոչեն [6] Եբր. Յափշտակեցէք զարծաթ, յափշտակեցէք զոսկի, զի անթիւ են զարդք, եւ առատութիւն ամենայն սպասուց ցանկալեաց։ (10) Դատարկացաւ եւ ունայնացաւ եւ ամայացաւ. [7] Եբր. այլագունեցան [8] Եբր. արօտ կորեանց նոցա, ուր շրջէին առիւծն, առիւծն մատակ

[9] Եբր. զկառս նորա [10] Եբր. բարբառք պատգամաւորաց քոց [11] Եբր. ուր ոչ պակասէ որս [12] Եբր. եւ դրնդիւն երիվարաց, և շաչիւն կառաց։ (3) Հեծեալն ամբառնայ զսուրն որ փայլէ, եւ զնիզակն որ շողայ, եւ լինին բազմութիւն վիրաւորաց, եւ յաճախութիւն անկելոց, եւ չիք վախճան դիականց, թաւալգլոր խաղան ի վերայ սպանելոց, (4) Վասն յաճախութեանց պոռնկութեան պոռնկին, որ էր գեղապանծ յոյժ եւ տէր կախարդութեանց [13] Եբր. ղօղեան [14] Եբր. խայտառակ, եւ եդից զքեզ տեսիլ նշաւակի [15] Եբր. խոյս տացէ ի քէն եւ ասասցէ. Աւերեցաւ [16] Եբր. նորա [17] Եբր. Միթէ լա՞ւ իցես դու քան զՆով-Ամոն, որ բնակեալ էր

մէջ գետոց, եւ ջուրք շուրջ զնովաւ.
որոյ [1]սկիզբն ծով, եւ ջուրք պարիսպ
9 նորա։ Եթեովպացիք եւ Եգիպտոս զօ-
րութիւն նորա, եւ չիք [2]չափ փախս-
տեան նորա." եւ Լիբէացիք եղեն օգնա-
10 կանք [3]նորա։ Սակայն եւ նա յպղպող-
գեալ գերի գնայցէ, եւ զտղայս նորա
զքարի հարցեն [4]ի սկզբան ճանապարհաց
նորա", եւ ի վերայ ամենայն պատուա-
կանաց նորա վիճակս արկանիցեն, եւ
ամենայն մեծամեծք նորա ձեռնկապովք
11 կապեսցին։ Եւ դու արբեսցիս եւ [5]յի-
մարեսցիս, եւ խնդրեսցես քեզ ոտնկայ
12 ի թշնամեաց։ Եւ ամենայն ամուրք քո
իբրեւ [6]զթզենի թզով", որ թէ շարժեսցին՝
13 անկցին ի բերան ուտելեաց։ Ահա ազգք
քո իբրեւ զկանայս են ի քեզ. թշնամ-
եաց քոց բացցին բանալով դրունք երկ-
րին քո, եւ կերիցէ հուր զնիգս քո։
14 Լից քեզ ջուր պաշարման, եւ պնդեա
զամուրս քո. մուտ ի կաւ եւ կոխեա
[7]ընդ յարդի, եւ պնդեա քան զաղիւս".

[1] Եբր. խրամ էր [2] Եբր. չափ. Փուդացիք [3] Եբր. քո [4] Եբր. յանկիւնս ամենայն ճանապարհաց [5] Եբր. թաքիցես [6] Եբր. զթզենիս երախայրեօք [7] Եբր. ի շաղախ, եւ զօրացո զաղիւսանոցն

15 Անդ կերիցէ զքեզ հուր, եւ սատա-
կեսցէ զքեզ սուր. եւ կերիցէ զքեզ
իբրեւ [8]զմարախ, եւ ծանրասցի իբրեւ
16 զջորեակ"։ Բազմացուցեր զվաճառս քո
իբրեւ զաստեղս երկնից. զիմեաց ջոր-
17 եակ, եւ թռեաւ. [9]Խաղաց իբրեւ
զգրուիճ. եւ խառնիճաղանջն քո իբրեւ
զմարախ" մածեալ զցանգով յաւուր
ցրտոյ. ծագեաց արեւ եւ [10]խաղաց, եւ
ոչ ծանեաւ զտեղի իւր. վա՜յ նոցա։
18 Նիրհեցին հովիւք քո. թագաւորն Ա-
սորեստանեայց կոտորեաց զզօրս քո,
չուեաց ազգ քո ի լերինս, եւ ոչ ոք էր
19 որ մնայր։ Թարախեցան վէրք քո, եւ
չիք բժշկութիւն բեկման քում". ամե-
նեքին որ լուան զգոյժ քո՝ ծափս հար-
ցեն ի վերայ քո. քանզի յո՞յր վերայ
ոչ չոգաւ չարութիւն քո հանապազ։

[8] Եբր. զջորեակ. բազմացեր իբրեւ զջորեակ, բազմացիր իբրեւ զմարախ [9] Եբր. Թագաւորք քո իբրեւ զմարախ, եւ իշխանք քո իբրեւ զխումբս մարախոյ [10] Եբր. խաղացին եւ ոչ ծանուցաւ տեղի նոցա թէ ուր էր։(18)Նիրհեցին հովիւք քո, արքայդ Ասորեստանի, անկեալ դնին մեծամեծք քո. ցրուեցաւ ժողովուրդ քո ի լերինս, եւ ոչ ոք է որ ժողովէ զնոսա։(19)Չիք դարման բեկման քո, սաստիկ բժշկութեան են վէրք քո

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ԱՄԲԱԿՈՒՄԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 ԱՌԱԾ զոր ետես Ամբակում մար-
2 գարէ։ Մինչեւ յե՞րբ, Տէր, աղա-
ղակիցեմ, եւ ոչ լուիցես, գոչիցեմ առ
3 քեզ զրկեալ, եւ ոչ փրկիցես։ Ընդէ՞ր
ցուցեր ինձ [2]աշխատութիւնս եւ վաս-
տակս, տեսանել զթշուառութիւն եւ
զամպարշտութիւն. առաջի իմ եղեւ
դատաստան, եւ առնոյր դատաւորն կա-
4 շառս"։ Վասն այնորիկ ցրուեցան օրէնք,
եւ իրաւունք ի գլուխ ոչ ելանեն, զի
ամպարիշտն յաղթահարէ զարդարն.
վասն այնորիկ ելանէր դատաստանն
թեւր։
5 [3]Տեսէք, արհամարհոտք", եւ հայե-
ցարուք, եւ զարմացարուք զարմանս, [4]եւ
եղծարուք." զի գործ մի գործեմ ես յա-
ւուրս ձեր, որում ոչ հաւատայցէք՝ թէ-
6 պէտ եւ ոք պատմեսցէ ձեզ։ Զի ահա
ես զարթուցանեմ զՔաղդէացիս, զազգ
դառն եւ զերագ, որ գնայ ընդ լայնու-
թիւն երկրի՝ ժառանգել զխորանս որ ոչ
7 իւր են։ Ահեղ եւ երեւելի, եւ դատաս-
տան նորա յանձնէ իւրմէ [5]եղիցի, եւ
8 առած" իւր յինքենէ ելցէ։ Վաղեսցեն
առաւել քան զինձս երիվարք նոցա,
[6]երագունք քան զգայլս Արաբացւոց.
ասպատակեսցեն ասպազէնք նորա, եւ"
դիմեսցեն ի հեռաստանէ. եւ սլասցին
իբրեւ զարծուիս յօժարութեամբ ի վե-
9 րայ կերակրոյ։ [7]Կատարած ամպարշտաց
հասցէ՝ դարձելոցն ընդդէմ երեսաց նո-
ցա." կուտեսցէ զգերի իբրեւ զաւազ։
10 Եւ ինքն [8]ընդ թագաւորս փափկաս-
ցի", եւ բռնաւորք խաղալիկք նորա.
եւ ինքն ընդ ամենայն ամուրս խաղա-
լով խաղասցէ, եւ կուտեսցէ հողակոյտս,
11 եւ կալցի զնա։ Յայնժամ փոխեսցին
միտք նորա, [9]անցցէ եւ հաճեսցէ." Այս
զօրութիւն Աստուծոյ իմոյ է։
12 Ո՞չ ապաքէն դու ես ի սկզբանէ Տէր
Աստուած [10]մեր, եւ" մի՛ մեռցուք.
Տէր, ի դատաստան եդիր զնա. [11]եւ
առեղծեր զիս յանդիմանել զխազ նո-
13 րա"։ Սուրբ է ակն քո ի տեսանելոյ
զչարիս, եւ հայել [12]յաշխատութիւնս ոչ
կարասցես. զմէ՞ հայեցար յարհամար-
հոտս եւ առունգանեցեր ի կլանել ամ-
14 պարշտի զարդարն[13]. Եւ առնիցես զմար-
դիկ իբրեւ զձկունս ծովու, եւ իբրեւ
զսողունս որոց ոչ գոյ առաջնորդ։
15 [14]Զվախճանն կարթիւ կորզեաց, եւ
ձգեաց զնա ցանցիւ իւրով, եւ ժողո-
վեաց զնա ուռկանօք իւրովք. վասն
այնորիկ ուրախ եղիցի եւ ցնծասցէ ‛սիրտ
16 նորա". Եւ վասն նորին զոհեսցէ ուռ-
կանին իւրում, եւ խունկս ծխեսցէ
ցանցին իւրում. զի նոքօք պարարեաց
զբաժին իւր, եւ կերակուր իւր ընտիր։
17 Վասն այնորիկ սփռեսցէ՞ զցանցն իւր,
եւ միշտ կոտորել զազգս ո՞չ խնայեսցէ։

## ԳԼ. Բ

1 Ի պահու իմում կացից, եւ ելից ի վե-
րայ վիմի. եւ դիտեցից տեսանել զինչ
խօսիցի ընդ իս, եւ զինչ [15]տացէ պա-
տասխանի յանդիմանութեան իմում։
2 Պատասխանի ետ ինձ Տէր եւ ասէ,
Գրեա զտեսիլդ զայդ յայտնապէս ի տախ-
տակս, զի որ ընթեռնուն՝ համարձակ
3 ընթեռնուցու։ Զի տակաւին տեսիլդ ի

---

[1] Եբր. Պատգամ, կամ, Տեսիլն [2] Եբր. զանօրէնութիւն, և ետուր տեսանել թշուառութիւն, զի յափշտակութիւն եւ բռնութիւն առաջի իմ է. և առնի դատ, և յառնէ կռիւ [3] Եբր. Տեսէք յազգս [4] Յեբր. պակաս [5] Եբր. եւ մեծութիւն [6] Եբր. եւ զայրագինք քան զգայլս երեկորին. եւ հեծեալք նորա արշաւեսցեն, եւ այրուձին [7] Եբր. Ամենեքին ի յափշտակութիւն եկեսցեն. դէմք երեսաց նոցա յառաջ կայս, եւ

[8] Եբր. ծաղր առնիցէ զթագաւորս [9] Եբր. եւ խրոխտասցի եւ մեղիցէ, ասէ, [10] Եբր. իմ, Սուրբ իմ. [11] Եբր. Վէմ, ի յանդիմանել հաստատեցեր զնա [12] Կամ, յանիրաւութիւնս [13] Եբր. [illegible], քան զնա [14] Եբր. Զամենայն [15] Եբր. տաց

ժամանակս է, եւ [1]ծագեսցէ ի սպառ,
եւ ոչ յունայնութեան. բայց՝ եթէ
անազանեսցէ, համբեր նմա. զի [2]որ
գալոցն է եկեսցէ եւ ոչ անազանեսցէ.
4 Եւ եթէ երկմտեսցէ ոք, ոչ հաճեսցի
ընդ նա անձն իմ. զի արդարն ի հա-
5 ւատոց կեցցէ։ Այլ կարծօղն եւ արհա-
մարհօղն՝ այր ամբարտաւան է՝ եւ ոչ
ինչ վճարեսցէ՝. որ ընդարձակեաց իբ-
րեւ զդժոխս զանձն իւր, եւ անյագ ե-
ղեւ իբրեւ զմահ. եւ ժողովեսցէ առ
ինքն զամենայն հեթանոսս, եւ զազգս
6 ամենայն յինքն ամփոփեսցէ։ Ո՞չ ա-
պաքէն զայս ամենայն առակ զնմանէ
առակեսցեն, եւ զնա արկցեն յերգ եւ
ասասցեն, Վա՜յ որ յաճախէ անձին իւ-
րում որ ոչ իւր իցէ, մինչեւ ցե՞րբ,
եւ ծանրացուցանէ [3]զանուր իւր ծանրու-
7 թեամբ։ Զի՝ յանկարծակի յարիցեն կե-
րիչք [4]նորա, եւ զարթիցեն դաւաճանք
[4]նորա. եւ եղիցես նոցա յափշտակու-
8 թիւն։ Զի դու կողոպտեցեր զազգս բա-
զումս, եւ զքեզ կողոպտեսցեն ամենայն
մնացորդք ժողովրդոց՝ վասն արեանց
մարդկան, եւ ամպարշտութեան երկրի
եւ քաղաքի եւ ամենայն բնակչաց նորա։
9 Վա՜յ որ ագահէ զագահութիւն չար տան
իւրոյ, դնել ի բարձունս զբոյն իւր,
10 [5]կորզել ի ձեռաց չարաց՝։ Խորհեցար
զամօթ տան քո, [6]սպառեցեր զազգս
11 բազումս, եւ յանցեաւ անձն քո։ Զի
քար [7]ի հիմանէ աղաղակեսցէ, եւ որդն
ի փայտէ գոչեսցէ զայս՝։
12 Վա՜յ որ շինէ զքաղաք արեամբ, եւ
պատրաստէ զքաղաք անիրաւութեամբ։
13 Ո՞չ այդ ամենայն ի Տեառնէ ամենակա-
լէ է. եւ [8]պակասեցին ժողովուրդք բա-
զումք ի հրոյ, եւ ազգք բազումք նուա-
14 ղեցան՝։ Զի լցցի երկիր գիտութեամբ
փառաց Տեառն իբրեւ զջուրս [9]բազումս
որ ծածկեն զծովս։

15 Վա՜յ որ [10]արբուցանէ ընկերի իւրում
հրապոյրս պղտորս, եւ արբուցանէ, զի
16 հայեսցի յայրս նոցա։ Զյագուրդ անար-
գանաց ի փառաց՝ արբ եւ դու, չար-
ժեաց եւ դողա. պաշարեաց զքեզ բա-
ժակ աջոյ Տեառն, եւ ժողովեցաւ՝ ա-
17 նարգութիւն ի վերայ փառաց քոց։ Զի
ամպարշտութիւն Լիբանանու ծածկեսցէ
զքեզ եւ [11]թշուառութիւն գազանաց զար-
հուրեցուսցէ զքեզ՝ վասն արեանց մարդ-
կան եւ ամպարշտութեան երկրի եւ
քաղաքի եւ ամենայն բնակչաց նորա։
18 Զի՞նչ օգուտ է [12]դրօշելոյ՝ զի դրօշե-
ցին զնա, ստեղծին զնա ձուլածոյ, ե-
րեւոյթ սուտ՝. զի յուսացաւ որ ստեղծն
ի ստեղծուածն իւր առնել իւր կուռս
19 [13]անօգուտս։ Վա՜յ որ ասէ ցփայտ, Սթա-
փեաց, եւ զարթիր [14]եւ ցքարն՝ թէ
Բարձրացիր, եւ նա է երեւոյթ առ ա-
չօք. եւ՝ նա է կռած արծաթոյ եւ ոսկ-
ւոյ, եւ ամենեւին շունչ ոչ գոյ [15]ի նո-
20 սա։ Այլ Տէր ի տաճարի սրբութեան իւ-
րոյ, [16]եւ երկիցէ՝ յերեսաց նորա ամե-
նայն երկիր։

ԳԼ. Գ

1 Աղօթք Ամբակումայ մարգարէի [17]երգով։
2 Տէր, զլուր քո լուայ եւ երկեայ. Տէր,
[18]հայեցայ ի գործս քո եւ զարհուրեցայ.
ի մէջ երկուց գազանաց ծանիցիս, ի
մերձենալ ամացն յայտնեսցիս, ի հա-
սանել ժամանակին երեւեսցիս. ի խռո-
վել անձին իմոյ՝ ի բարկութեան զո-
ղորմութիւնս յիշեսցես։
3 Աստուած ի Թեմանայ [19]եկեսցէ, եւ
Սուրբն ի հովանաւոր եւ յանտառախիտ
լեռնէ՝։ Հանգիստ։ Ծածկեսցէն զերկինս
փառք նորա, օրհնութեամբ նորա լի

---

[1] Եբր. փութայ ի վախճան, և ոչ ստեսցէ. [2] Եբր. գալով գայցէ եւ ոչ անազանեսցէ. (4) Ահա հպարտացաւ, չէ ուղիղ անձն նորա ի նմա, այլ արդարն ի հաւատոց իւրոց կեցցէ։ (5) Մանաւանդ զի գինի վերծուցանէ. այր ամբարտաւան ոչ կայ հանդարտ [3] Եբր. զբաւ, (կամ, կաւ թանձր) ի վերայ իւր։ (7) Ո՞չ ապաքէն [4] Եբր. քո [5] Եբր. կորզել զանձն ի ձեռաց չարի [6] Եբր. սպառել [7] Եբր. յորմոյ աղաղակեսցէ, եւ գերան ի փայտէ տացէ պատասխանի [8] Եբր. աշխատ եղեն ժողովուրդք վասն հրոյ, և ազգք ի զուր վաստակեցան [9] Եբր. ծովու

[10] Եբր. արբեցուցանես զընկեր քո, եւ յաւելուս զթոյն (կամ. զբարկութիւն) քո, և արբեցուցանես զի հայել ի մերկութիւնս նոցա։ (16) Յագեցար յանարգանաց քան ի փառաց. արբ եւ դու, եւ մերկացիր. դարձցի առ քեզ բաժակ աջոյ Տեառն, եւ [11] Եբր. յափշտակութիւն [12] Եբր. դրօշեալն զոր դրօշեաց ճարտարն, ձուլածոյն եւ որ ուսուցանէ ստութիւն [13] Եբր. համերս [14] Եբր. ցքարն համր. նա՞ ուսուսցէ. ահա [15] Եբր. ի նմա [16] Եբր. լուռ լեր [17] Եբր. ի վերայ Շիկիոնոթի, (կամ, նուագի [18] Եբր. զգործ քո ի մէջ ամաց կենդանացո. ի մէջ ամաց արա ծանօթ. [19] Եբր. եկն, և Սուրբն ի լեռնէն Փառանու

4 եղեւ երկիր ։ [1]Ճառագայթք նորա իբրեւ
գլոյս եղիցին, եւ եղջեւրք ի ձեռին նո-
րա . եւ հաստատեաց զսէր սաստիկ զօ-
5 րութեան իւրոյ ։ Առաջի երեսաց նորա
գնասցէ բան, եւ ելցէ ի դաշտս զհետ
6 նորա ։ Եկաց, եւ շարժեցաւ երկիր, հա-
յեցաւ, եւ հալեցան ազգք. լերինք խոր-
տակեցան բռնութեամբ, եւ բլուրք յա-
ւիտենականք հալեցան . զգնացս նորա
յաւիտենական փոխանակ աշխատու-
7 թեանց տեսի ։ Խորանք՝ Եթէովպացւոց,
զարհուրեսցին եւ խորանք երկրին Մա-
8 դիամու ։ Միթէ գետոց բարկացար՞ Տէր,
կամ սրտմտութիւն քո ի վերայ գետո՞ց,
կամ [2]աստատակ քո ի վերայ ծովո՞ւ,
զի եցես յերիվարս քո, եւ [3]հեծելու-
9 թիւն քո փրկութիւն է ։ Լարելով լա-
րեսցես զաղեղն քո ի վերայ իշխանու-
թեան, ասէ Տէր . գետոց պատառեսցի
10 երկիր ։ Տեսցեն զքեզ ազգք, եւ երկ-
նեսցեն . որ ցանես զջուրս գնացից՝.
ետուն անդունդք զձայնս իւրեանց,
[4]զբարձրութիւն աստկութեան իւրեանց։
11 Բարձաւ արեգակն, եւ լուսին եկաց ի
կարգի իւրում . գնասցեն նետք քո ի
լոյս՝, ի փայլիւն փայլատականց զինուց
12 քոց ։ Սպառնալեօք [5]նուազեցուցեր զեր-
կիր, եւ բարկութեամբ զիջուցես՝
13 զազգս ։ Ելեր ի փրկութիւն ժողովրդ-
եան քո [6]փրկել զօծեալս քո. արկեր
զգլխով անօրինաց մահ . զարթուցեր
զկապանս մինչեւ ցպարանոցս իսպառ ։
14 Հանդիստ ։ Խորտակեցեր ապշութեամբ
զգլուխս բռնաւորաց . սասանեսցին ի
նմա, արձակեսցեն զերասանակս իւր-
15 եանց իբրեւ զտնանկ զաղտակեր ։ Հա-
ներ ի ծով զերիվարս քո, պղտորել
16 զջուրս բազումս ։ Զգուշացայ եւ զար-
հուրեցաւ որովայն իմ ի ձայնէ աղօթից
շրթանց իմոց . եմուտ դողումն յոսկերս
իմ, եւ խռովեցաւ փոր իմ ինքնութ.
հանգեայց յաւուր նեղութեան, ելանել
ինձ ի ժողովուրդ պանդխտութեան իմոյ ։
17 Զի թզենի ոչ տացէ զպտուղ իւր, եւ
մի՝՝ եղիցի ծնունդ որթոյ . ստեսցէ բեր
ձիթենւոյ, եւ դաշտք մի՛ արասցեն
զկերակուր, պակասեսցեն հօտք ի ճա-
րակոյ, եւ ոչ լիցին եզինք ի մսուրս,
18 Այլ ես ի Տէր ցնծացայց, եւ ուրախ ե-
19 ղէց յԱստուած Փրկիչ իմ ։ Տէր [7]Աս-
տուած զօրութիւն իմ, եւ կարգեսցէ զոտս
իմ [8]ի վախճան . եւ հանցէ զիս ի բար-
ձունս յաղթել երգով նորա՝ ։

---

[1] Եբր. Եւ պայծառութիւն նորա իբրեւ զլոյս էր, ճառագայթք ի ձեռանէ նորա . եւ անդ էր ծածկոյթ զօրութեան նորա ։ (5) Առաջի երեսաց նորա երթայր սրածութիւն, եւ ելանէին կայծակունք յոտից նորա ։ (6) Եկաց եւ չափեաց զերկիր, հայեցաւ եւ դողացոյց զազգս, եւ փշրեցան լերինք յաւիտենականք, կորացան բլուրք մշտնջենականք . ճանապարհք նորա յաւիտենից են ։ (7) Ի տառապանս տեսի զխորանս [2]Եբր. բարկութիւն [3]Եբր. յանդրուարս քո փրկութեան ։ (9) Մերկանալով մերկացաւ աղեղն քո, երդմունք առ ցեղսն էին բան հաւատարիմ ։ Հանգիստ ։ Գետովք պատառեցեր զերկիր ։ (10) Տեսին զքեզ լերինք, դողացին. հեղեղ ջուրց անց [4]Եբր. բարձրացոյց զձեռս իւր ի վեր . (11) Արեգակն եւ լուսին կացին ի կարգի իւրեանց. ի լոյս նետոց քոց գնացին [5]Եբր. շրջեցար յերկրի, և բարկութեամբ կոխեցեր

[6] Եբր. ի փրկութիւն օծելոյ քո (կամ, ընդ օծելոյ քո) ճմլեցեր զգլուխ ի տանէ անօրինին, մերկացուցեալ զհիմունս մինչեւ ցպարանոցն ։ Հանգիստ ։ (14) Խորտակեցեր գաւազանօք նոցա զգլուխ զօրաւորաց նոցա, մրրկեցան ի ցրուել զիս. ցնծութիւն նոցա իբրեւ յուտել զտնանկն ի ծածուկ ։ (15) Գնացեր ի ծովու երիվարօք քովք, ի կուտակս ջուրց բազմաց . (16) Լուայ եւ զարհուրեցաւ որովայն իմ, ի ձայնէն բաբախեցին շրթունք իմ. եմուտ փտութիւն յոսկերս իմ, եւ սարսափեցայ ի կայի իմում, զի հանգեայց յաւուր նեղութեան՝ յորժամ ելցէ առ ժողովուրդն, որ յարձակելոցն է գնդիւք իւրովք

(17) Թէպէտ եւ թզենի ոչ ծաղկեսցի, եւ ոչ [7]Եբր. Եհովայ [8]Եբր. իբրեւ զեղանց. եւ ի վերայ բարձանց իմոց տացէ ինձ կոխել ։ Առ գլուխ երաժշտացն . ի նուագարանս իմ

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ՍՈՓՈՆԵԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 ԲԱՆ Տեառն որ եղեւ առ Սոփոնիա
որդի Քուսեայ, որդւոյ Գոդոդեայ
որդւոյ Ամարեայ, որդւոյ Եզեկեայ,
յաւուրս Յովսեայ որդւոյ Ամովսայ ար-
քայի Յուդայ։
2 [1]Պակասելով պակասեսցէ ամենայն յե-
3 րեսաց երկրէ, ասէ Տէր։ Պակասեսցէ մարդ
եւ անասուն, պակասեսցեն թռչունք
երկնից եւ ձկունք ծովու, եւ տկարասցին
ամպարիշտք. եւ բարձից զանօրէնս" յե-
4 րեսաց երկրէ, ասէ Տէր։ Եւ ձգեցից զձեռն
իմ ի վերայ Յուդայ, եւ ի վերայ ամենայն
բնակչաց Երուսաղեմի. եւ բարձից ի տեղ-
ւոջէդ յայդմանէ [2]զանուն Բահաղու, եւ
զանուն քրմացն հանդերձ քահանայիւքն,
5 Որ երկիր պագանեն ի տանիս զօրու-
թեանց երկնից. եւ որք [3]երդնուին յա-
6 նուն Տեառն՝ արքային իւրեանց", Եւ
որք խոտորէին ի Տեառնէ, եւ որք ոչ
խնդրէին զՏէր, եւ որք ոչ ի Տեառն
կողմն էին։
7 [4]Երկերուք յերեսաց Տեառն Աստու-
ծոյ. զի մերձ է օր Տեառն. զի պատ-
րաստեաց Տէր զզոհս իւր, եւ հրաւիր-
8 եաց զկոչնականս իւր։ Եւ եղիցի յա-
ւուր զոհի Տեառն՝ խնդրեսցից զվրէժ
յիշխանաց եւ ի տանէ թագաւորին, եւ
յամենայնէ որ զգեցեալ են զհանդերձս
9 օտարս։ Եւ խնդրեսցից վրէժ [5]յայտնա-
պէս յամենեցունց առաջի դրանդեացն"
յաւուր յայնմիկ, որք լնուին զտուն
[6]Տեառն Աստուծոյ" իւրեանց ամպարշ-
10 տութեամբ եւ նենգութեամբ։ Եւ եղիցի
յաւուր յայնմիկ, ասէ Տէր, Ձայն աղա-
ղակի ի դրանէ [7]խոցոտելոցն, եւ գոյժ
[8]յերկրորդ դրանէն", եւ բեկումն մեծ ի
11 բլրոց։ Ողբացէք, բնակիչք [9]կոտորելոց.
զի նմանեցաւ" ամենայն ժողովուրդ
[10]Քանանացւոց. սատակեցան ամենեք-
եան որ [11]հպարտացեալ էին արծաթով՝։
12 Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ քննեցից
զԵրուսաղէմ ճրագաւ, եւ խնդրեցից
վրէժ յարանցն որ [12]արհամարհեցին զպահ-
պանութիւնս" իւրեանց. որ ասէին ի
սիրտս իւրեանց, Ոչ բարի ինչ առնէ Տէր,
13 եւ ոչ չար։ Եւ եղիցի զօրութիւն նոցա
ի յափշտակութիւն, եւ տունք նոցա
յապականութիւն. շինեսցեն տունս, եւ
մի՛ բնակեսցեն ի նոսա, տնկեսցեն այ-
գիս, եւ մի՛ արբցեն զգինի նոցա։
14 Զի մերձ է օր Տեառն մեծն, մերձ է
եւ արագ յոյժ. ձայն աւուր [13]Տեառն
խիստ եւ դառն, կարգեալ զօրաւոր"։
15 Օր բարկութեան օրն այն, օր նեղու-
թեան եւ վտանգի, օր թշուառութեան
եւ ապականութեան, օր խաւարի եւ
16 միգի, օր ամպոյ եւ մառախղոյ. Օր
փողոյ եւ աղաղակի ի վերայ ամուր
քաղաքաց, եւ ի վերայ անկեանց բար-
17 ձանց։ Եւ նեղեցից զմարդիկ, եւ գնաս-
ցեն իբրեւ զկոյրս. զի Տեառն մեղան,
եւ [14]առին զանուն նորա ի վերայ սնոտ-
եաց, որք ոչ ինչ կարացին օգնել նոցա.
եւ հեղցէ զարիւն" նոցա իբրեւ զհող,
եւ [15]զմարմինս նոցա իբրեւ զաղբ։
18 Արծաթ նոցա եւ ոսկի մի՛ կարասցեն
փրկել զնոսա յաւուր բարկութեան
Տեառն, եւ հրով նախանձու նորա մա-
շեսցի ամենայն երկիր. զի վախճան [16]եւ
սագնապ" արասցէ ի վերայ ամենայն
բնակչաց երկրի։

[1]Եբր. Կորուսանելով կորուսից զամենայն յերե-
սաց երկրէ, ասէ Տէր։ (3) Կորուսից զմարդ և
զանասուն, կորուսից զթռչունս երկնից, եւ
զձկունս ծովու, եւ զգայթակղութիւնս հան-
դերձ ամպարշտօք, եւ բարձից զմարդ [2]Եբր.
զմնացորդն [3]Եբր. երկիր պագեալ երդնուին
ի Տէր եւ երդնուին յարքայն իւրեանց, կամ, ի
Մեղքոմ [4]Եբր. Լուռ լեր [5]Եբր. յամե-
նեցունց որ վաղէին ըստ սեամս [6]Եբր. տերանց

[7]Եբր. Ձկանց [8]Եբր. ի Մասենայ, այսինքն՝ յերկ-
րորդէն [9]Եբր. Մակթեսի, զի կործեալ [10]Կամ,
վաճառականն [11]Եբր. բերէին արծաթ [12]Եբր.
նստէին ի վերայ մրրոյն [13]Եբր. Տեառն. դառ-
նապէս գոչեսցէ անդ հզօրն [14]Եբր. հեղցի
արիւն [15]Եբր. մարմին [16]Եբր. տագնապաւ

## Գլ. Բ

1 ¹Ժողովեցարո՛ւք եւ խնդրեցէ՛ք, ազգք
2 անխրատք, Մինչչեւ եղեալ իցէք իբրեւ
զծաղիկ անցաւոր, մինչչեւ եկեալ իցէ օր
բարկութեան՝ սրտմտութեան Տեառն։
3 Խնդրեցէ՛ք զՏէր, ամենայն խոնարհք
²երկրի. իրաւունս արարէք եւ զարդա-
րութիւն խնդրեցէ՛ք, եւ տուք պատաս-
խանի նոցա. զի՛ ծածկեսջիք յաւուր
4 բարկութեան Տեառն։ Զի Գազա յա-
փշտակեալ լիցի, եւ Ասկաղոն յապա-
կանութիւն, եւ Ազովտոս ի միջօրէի
կործանեսցի, եւ Ակկարոն յարմատոյ
5 խլեսցի։ Վա՜յ որ բնակեալդ էք ³ի վի-
ճակս ծովու՛, բնակիչք ⁴Կրետացւոց.
պատգամ Տեառն ի վերայ ձեր, Քանան,
երկիրդ այլազգեաց. եւ կորուսից ⁵զձեզ
6 ի բնակութենէ։ Եւ եղիցի ⁶Կրետ ճա-
7 րակ հօտից եւ գոմք խաշանց։ Եւ եղիցի
⁶վիճակ ծովուն՝ մնացորդաց տանն Յու-
դայ, եւ ի նոսա ճարակեսցին. եւ ի
տունս Ասկաղոնայ առ օթ դադարես-
ցեն ⁷յերեսաց որդւոցն Յուդայ՝. զի եկ-
եալ է նոցա յայց Տէր Աստուած իւր-
եանց, եւ դարձոյց զգերութիւն նոցա։
8 Լուայ զնախատինս Մովաբու եւ
զկոփանս որդւոցն Ամոնայ, որովք նա-
խատէին զժողովուրդ իմ, եւ մեծաբա-
9 նէին ի վերայ սահմանաց ⁸իմոց։ Վասն
այնորիկ կենդանի եմ ես, ասէ Տէր զօ-
րութեանց՝ Աստուած Իսրայէլի, զի Մո-
վաբ իբրեւ զՍոդոմ եղիցի, եւ որդիքն
Ամոնայ իբրեւ զԳոմոր. ⁹եւ Դամասկոս
լքեալ իբրեւ զշեղջ կալոյ՝ եւ ապա-
կանեալ յաւիտեան. մնացորդք ժողո-
վրդեան իմոյ յափշտակեսցեն զնոսա,
եւ մնացորդք ազգի իմոյ ժառանգեսցեն
10 զնոսա։ Եւ այն նոցա փոխանակ հպար-
տութեան նոցա, զի նախատեցին
եւ մեծաբանեցին ¹⁰ի վերայ Տեառն
11 ամենակալի։ Երեւեսցի Տէր ի վերայ
նոցա, եւ՝ սատակեսցէ զամենայն
աստուածս ¹¹ազգաց. եւ երկիր պաշ-
տեսցեն նմա իւրաքանչիւր ի տեղւոջէ
իւրեանց՝ ամենայն կղզիք ազգաց։
12 Եւ դուք, Եթէովպացիք, հարեալք սու-
13 սերի իմոյ էք. Եւ ¹²ձգեցից զձեռն իմ
ի վերայ հիւսիսոյ, եւ սատակեցից զԱ-
սորեստանեայսն, եւ եդից՝ զՆինուէ յա-
պականութիւն, անջրդի իբրեւ զանա-
14 պատ. Եւ արածեսցին ի միջի նորա
հօտք եւ ամենայն գազանք ¹³երկրի, եւ
գեամառուծք եւ ոզնիք ի յարկս նորա
բնակեսցին, եւ գազանք գոչեսցեն ի
նկուղս նորա, եւ ագռաւք ի դրունս
նորա. քանզի իբրեւ զմայր է բարձ-
15 րութիւն նորա։ Այս քաղաք վրիժա-
գործ բնակեալ յուսով, որ ասէր ի սրտի
իւրում, Ես եմ, եւ ոչ եւս ոք իցէ յետ իմ.
զիա՞րդ եղեւ յապականութիւն եւ ճարակ
գազանաց. ամենայն որ անցանիցէ ընդ
նա՝ շչեսցէ եւ շարժեսցէ ¹⁴զգլուխ իւր։

## Գլ. Գ

1 ¹⁵Ո՛վ երեւելիդ փրկեալ քաղաք ա-
2 ղաւնի՛։ Ոչ լուաւ ձայնի, եւ ոչ ընկա-
լաւ զխրատ. ի Տէր ոչ յուսացաւ, եւ
3 առ Աստուած իւր ոչ մերձեցաւ։ Իշ-
խանք նորա ¹⁶իբրեւ առիւծունք գոչես-
ցեն՝ եւ դատաւորք նորա իբրեւ զգայլս
¹⁷Արաբացւոց՝ որ ոչ թողուն ինչ ի վա-
4 ղիւ։ Մարգարէք նորա ¹⁸այսակիրք, ար-
համարհօղք՝. քահանայք նորա պղծեն
զսրբութիւնս, եւ ամպարշտեն յօրէնս։
5 Այլ Տէր արդար է ի միջի նորա. եւ ոչ
արասցէ անիրաւութիւն. ¹⁹ընդ առաւօտս
կանխաւ տացէ զիրաւունս իմ ի լոյս,
եւ ոչ թաքիցէ. եւ ոչ ծանիցէ զանի-
6 րաւութիւն ի պահանջել, Եւ ոչ ի սպառ

¹ Եբր. Ժողովեցէք զձեզ, և ժողովեցարուք, (կամ, Քննեցէք զձեզ, քննեցէք) ազգ անամօթ. (2) Մինչչեւ ծնեալ վճռոյն, մինչչեւ անցեալ աւուրն իբրեւ զմղեղ, մինչչեւ եկեալ ի վերայ ձեր բարկութեան սրտմտութեան Տեառն, մինչչեւ եկեալ ի վերայ ձեր աւուրն ² Եբր. երկրի որ առնէք զիրաւունս նորա. խնդրեցէք զարդարութիւն, խնդրեցէք զխոնարհութիւն, թերեւս ³ Ա. յօրինակ՝ ի ծովեզերս ⁴ Եբր. Քերեթին, տես Բ Թագ. Ը. 7։ ⁵ Եբր. զքեզ ⁶ Եբր. ծովեզրն ⁷ Յեբր. պակասէ ⁸ Եբր. նոցա ⁹ Եբր. վայր եղնճոյ, եւ բով աղի ¹⁰ Եբր. ի վերայ ժողովրդեան Տեառն զօրութեանց։ (11) Ահեղ է Տէր ի վերայ նոցա, զի ¹¹ Եբր. երկրի ¹² Եբր. ձգեսցէ զձեռն իւր ի վերայ հիւսիսոյ, և սատակեսցէ զԱսորեստանեայն, և դիցէ ¹³ Եբր. ազգաց. հաւալուսն և ոզնի ի խոյակս նորա ագցին. բարբառ նոցա հնչեսցէ ընդ պատուհանս, աւերումն ի սեամս, զի եղեւնափայտ նորա մերկացի։ (15) Այս է քաղաք ցնծալից որ բնակէր յապահովս ¹⁴ Եբր. զձեռն ¹⁵ Եբր. Վա՜յ ապստամբ և պիղծ. քաղաք հարստահարութեան ¹⁶ Եբր. ի միջի նորա առիւծունք որ մռնչեն ¹⁷ Եբր. երեկորին ¹⁸ Եբր. անպարկեշտք, արք նենգութեան ¹⁹ Եբր. առաւօտէ յառաւօտ հանէ ի լոյս զիրաւունս իւր, եւ ոչ կասեսցէ. իսկ անիրաւն ոչ գիտէ զամօթ։ (6) Սատակեցի զազգս. աշտա-

զանիրաւութիւն. ապականութեամբ կոր-
ծանեսցէ զամբարտաւանս . ապականե-
ցան անկիւնք նոցա , աւերեցից՝՝ զճա-
նապարհս նոցա, ամենեւին մի՛ եւս գնալ
ընդ նոսա . պակասեսցին քաղաքք
7 նոցա առ ի չգոյէ բնակչաց ։ [1]Ասացի թէ
Երկերուք յինէն, եւ ընկալարուք զխրատ,
եւ ոչ սատակեսջիք յերեսաց նորա ըստ
ամենայնի որչափ ինչ առից վրէժ ի
նմանէ . պատրաստեա կանխեա ընդ ա-
ռաւօտս . ապականեսցան ամենայն ճիւղք
8 նորա ։ Վասն այդորիկ սպասեա ինձ ,
ասէ Տէր , յաւուր յարութեան իմոյ ի
վկայութիւն . զի դատաստանք իմ ի վե-
րայ ազգաց՝ յժողովել զթագաւորս՝՝, ի
հեղուլ ի վերայ նոցա զբարկութիւն իմ,
զամենայն բարկութիւն սրտմտութեան
իմոյ , զի հրով նախանձու իմոյ մաշեսցի
ամենայն երկիր ։
9 Զի յայնժամ դարձուցից ի վերայ ժո-
ղովրդոց լեզու [2]յազգս նոցա՝՝, ի կար-
դալ ամենեցուն զանուն Տեառն , ի ծա-
10 ռայել նոցա նմա ընդ միով լծով . [3]ի
ծագաց գետոյն Եթէովպացւոց ընկալայց զնոսա
ընդ ցրուեալսն՝՝ մատուցանիցեն ինձ
11 պատարագս ։ Յաւուր յայնմիկ ոչ ամա-
չեսցես յամենայն գործոց քոց , որովք
ամպարշտեցար առ իս . զի յայնժամ զեր-
ծից ի քէն [4]զչարութիւն ամբարտաւա-
նութեան քո , եւ ոչ եւս յաւելցես մե-
ծարանել ի վերայ լերին սրբութեան
12 իմոյ ։ Թողից քեզ ժողովուրդ հեզ եւ
խոնարհ, եւ [5]երկիցեն յանուանէ՝՝ Տեառն։
13 Մնացորդք Իսրայելի ոչ արասցեն անի-
րաւութիւն , եւ ոչ խօսիցին սնոտիս ,
եւ ոչ գտցի ի բերան նոցա լեզու նեն-
գաւոր . զի նոքա արածեսցին եւ մա-
կաղեսցին , եւ ոչ ոք իցէ որ զարհու-
րեցուցանիցէ զնոսա ։
14 Ուրախ լեր յոյժ , դուստր Սիոնի ,
[6]եւ քարոզեա, Երուսաղէմ՝՝. ուրախ լեր
եւ զուարճացիր յամենայն սրտէ քումմէ,
15 դուստր Երուսաղեմի ։ [7]Զի եհան ի քէն
Տէր չուրջ զանիրաւութիւնս . փրկեաց
զքեզ Տէր ի ձեռաց թշնամեաց քոց՝՝. Թա-
գաւոր Իսրայելի Տէր ի մէջի քում, եւ
ոչ եւս տեսցես զչարիս ։
16 Ի ժամանակին յայնմիկ [8]ասէ Տէր
ցԵրուսաղէմ , Քաջալերեաց՝՝ Սիոն , մի՛
17 լքցին ձեռք քո ։ Տէր [9]Աստուած ի քեզ
է հզօրն , եւ փրկեսցէ զքեզ . ածցէ ի
վերայ քո ուրախութիւն , եւ նորոգեսցէ
զքեզ սիրով իւրով . եւ ուրախ լիցի ի
քեզ զուարճութեամբ իբրեւ յաւուր
18 տօնի . Եւ ժողովեցից զմանրեալսն քո .
19 վա՜յ որ նախատիցէ զնա ։ Ահաւասիկ
ես առնեմ վասն քո ի ժամանակին յայն-
միկ . եւ փրկեցից զճնչեալսն՝՝, եւ զմերժ-
եալն ընկալայց . եւ արարից զնոսա ի
պարծանս , եւ անուանիս ընդ ամենայն
20 [10]երկիր ։ Եւ ամաչեսցեն ի ժամանակին
յայնմիկ՝ յորժամ բարւի արարից ձեզ, եւ
ի ժամանակի յորժամ ընկալայց՝՝ զձեզ.
զի տաց զձեզ անուանիս եւ ի պարծանս
ընդ ամենայն ազգս երկրի , ի դարձու-
ցանել ինձ զգերութիւն ձեր առաջի
ձեր , ասէ Տէր ։

---

րակք նոցա կործանեցան , աւերեցի [1]Եբր. Ասացի, թէ Սոսուգիւ երկիցես յինէն, ընկալցիս զխրատ, եւ ոչ կործանեսցի բնակութիւն նորա ըստ ամենայնի զոր սահմանեալ էր իմ վասն նորա . այլ նոքա յարեան ընդ առաւօտս , ապականեցին զամենայն գործս իւրեանց ։ (8) Վասն այսորիկ սպասեցէք ինձ , ասէ Տէր , մինչեւ ցօրն յառնելոյ իմոյ յորս . զի վճիռ իմ է ժողովել զազգս, գումարել զթագաւորութիւնս [2]Եբր. սուրբ [3]Եբր. Յայնկոյս կողման գետոցն Եթէովպացւոց աղաչաւորք իմ, դուստր ցրուելոց իմոց [4]Եբր. զորս պարծին ի վերայ [5]Եբր. յուսասցին յանուն

[6]Եբր. խրախճոյս բարձ, Իսրայէլ [7]Եբր. Հեռացոյց ի քէն Տէր զդատաստանս քո, վանեաց զթշնամին [8]Եբր. ասասցի ցԵրուսաղէմ, Մի՛ երկնչիր, [9]Եբր. Աստուած քո ի մէջի քում. հզօր է, նա փրկեսցէ. ցնծասցէ ի վերայ քո ուրախութեամբ, լռեսցէ, (կամ. թողցէ) վասն սիրոյ իւրոյ, ուրախ լիցի ի քեզ խնդութեամբ . (18) Զթախծեալս վասն տարեկանաց ժողովեցից , որ ի քէնդ էին . բեռն էին ի վերայ նոցա նախատինք ։ (19) Ահա ես սպառեցից զորս նեղեն զքեզ ի ժամանակին յայնմիկ, եւ փրկեցից զոր կաղայն [10]Եբր. երկիր ամօթոյ իւրեանց ։ (20) Ի ժամանակին յայնմիկ ածից զձեզ, եւ ի ժամանակին ժողովեցից

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ԱՆԳԵԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 ՅԱՄԻՆ երկրորդի Դարեհի արքայի.
յամսեանն վեցերորդի, որ օր մի էր
ամսոյն, եղեւ բան Տեառն ի ձեռն
Անգէի մարգարէի [1]եւ ասէ, Խօսեաց
ընդ Զորաբաբելի որդւոյ Սաղաթիելի
յազգէ Յուդայ, եւ ընդ Յեսուայ որդւոյ
Յովսեդեկեայ քահանայի մեծի, եւ ա-
2 սացես, Այսպէս ասէ Տէր ամենակալ".
Ժողովուրդդ այդ ասեն, Ոչ է հասեալ
[2]ժամանակ շինելոյ զտունն Տեառն։
3 Եւ եղեւ բան Տեառն ի ձեռն Անգէի
մարգարէի՝ եւ ասէ,
4 Եթէ ձե՞զ միայն իցէ ժամանակ բնա-
կել ի տունս գմբեթեալս, եւ տունդ իմ
5 աւեր կայ։ Եւ արդ այսպէս ասէ Տէր
[3]ամենակալ. Կարգեցէք զմիտս ձեր ի
6 ճանապարհս ձեր։ Վարեցիք բազում եւ
ժողովեցիք սակաւ, ուտէիք եւ ոչ յա-
գէիք, ըմպէիք եւ ոչ լինէր ի յագուրդ,
զգենուիք եւ ոչ ջեռնուիք նոքօք, եւ
որ զվարձս բեր ժողովէր՝ ի ծրարս ծա-
կոտեալս ժողովէր։
7 Այսպէս ասէ Տէր ամենակալ. Դիք
8 զմիտս ձեր ի ճանապարհս ձեր։ Ելէք
ի լեառն, հարէք փայտ եւ շինեցէք
զտունդ. եւ հաճեցայց դովաւ եւ փա-
9 ռաւորեցայց, ասէ Տէր։ Հայեցարուք
ի բազում, եւ եղեւ սակաւ. եւ դուք
ի ներքս ի տունս կրեցէք, եւ ես ար-
տաքս փչեցի զայն. [4]վասն այսորիկ
այսպէս ասէ Տէր ամենակալ. Փոխա-
նակ զի տունդ իմ" աւեր է, եւ դուք
ճեպեալ էք յիւրաքանչիւր տուն իւր։
10 Վասն այսորիկ [5]երկինք կալցին զանձ-
րեւ քո", եւ երկիր արգելցէ զարդիւնս
11 իւր։ Եւ ածից [6]սուր ի վերայ երկրի",
եւ ի վերայ լերանց եւ ի վերայ գի-
նւոյ եւ ի վերայ իւղոյ, եւ ի վերայ ամե-
նայն բուսոյ երկրի եւ ի վերայ մարդ-
կան եւ ի վերայ անասնոց, եւ ի վերայ
12 ամենայն վաստակոց ձեռաց։ Եւ
լուաւ Զորաբաբէլ որդի Սաղաթիելի
[7]յազգէ Յուդայ", եւ Յեսու Յովսեդեկ-
եայ քահանայ մեծ, եւ ամենայն մնա-
ցորդք ժողովրդեանն ձայնի Տեառն Աս-
տուծոյ իւրեանց, եւ զպատգամս Անգէի
մարգարէի, որպէս առաքեաց զնա Տէր
Աստուած նոցա [7]առ նոսա". եւ երկեաւ
13 ժողովուրդն յերեսաց Տեառն։ Եւ ասէ
Անգէոս հրեշտակն [8]Տեառն ցժողո-
վուրդն", Ես ընդ ձեզ եմ, ասէ Տէր։
14 Եւ զարթոյց Տէր զոգի Զորաբաբելի
որդւոյ Սաղաթիելի [9]յազգէ Յուդայ, եւ
զոգի Յեսուայ Յովսեդեկեայ քահանայի
մեծի, եւ զոգի ամենայն մնացորդաց
ժողովրդեանն. եւ մտանէին եւ գոր-
ծէին զգործ ի տան Տեառն ամենակալի
Աստուծոյ իւրեանց, ի քսան եւ ի չորս[10]
ամսոյն վեցերորդի, յամին երկրորդի
Դարեհի արքայի։

## ԳԼ. Բ

1 Յամսեանն եւթներորդի, որ օր քսան
եւ մի էր ամսոյն, խօսեցաւ Տէր ի ձեռն
2 Անգէի մարգարէի, եւ ասէ, Ասա ցԶո-
րաբաբէլ որդի Սաղաթիելի [11]յազգէ Յու-
դայ, եւ ցՅեսու Յովսեդեկեայ քահա-
նայ մեծ, եւ ցամենայն մնացորդս ժո-
ղովրդեանն։
3 Ո՞յր ի ձէնջ տեսեալ իցէ զտունս զայս

---

[1]Եբր. առ Զորաբաբէլ որդի Սաղաթիելի, իշխան Յուդայ, եւ առ Յեսու Յովսեդեկեայ քահանայ մեծ, եւ ասէ. (2) Այսպէս ասէ Տէր զօրութեանց, եւ ասէ [2]Եբր. ժամանակն, ժամանակ [3]Եբր. զօրութեանց, այսպէս եւ այլուր [4]Եբր. վասն է՞ր, ասէ Տէր զօրութեանց. վասն տան իմոյ որ

[5]Եբր. ի վերայ ձեր փակեցին երկինք ի ցօղոյ [6]Եբր. երաշտութիւն ի վերայ երկրի, եւ ի վերայ լերանց [7]Եբր. պակասէ [8]Եբր. Տեառն ի պատգամաւորութեան Տեառն ցժողովուրդն եւ ասէ [9]Եբր. իշխանի [10]Եբր. [illegible], աւուր [11]Եբր. ցիշխան

ի փառաւորութեան իւրում զառաջինն,
եւ ո՞րպէս արդ տեսանէք զդա՝ որպէս զոչ-
4 ինչ առաջի ձեր։ Եւ արդ զօրացիր
դու, Զորաբաբէլ, ասէ Տէր, եւ զօրա-
ցիր, Յեսու Յովսեդեկեայ քահանայ
մեծ, եւ զօրասցի ամենայն ժողովուրդ
երկրիդ, ասէ Տէր, եւ գործեցէք զի
ես ընդ ձեզ եմ, ասէ Տէր ամենակալ։
5 Եւ բանն զոր ուխտեցի ընդ ձեզ՝ յելա-
նելն յերկրէն Եգիպտացւոց, եւ Հոգին
իմ որ կայ ի միջի ձերում. քաջալերե-
6 ցարուք։ Զի այսպէս ասէ Տէր ամենա-
կալ. [1]Դարձեալ միւսանգամ" շարժեցից
զերկինս եւ զերկիր, եւ զծով եւ զցա-
7 մաք։ Եւ միանգամայն շարժեցից զամե-
նայն ազգս. եւ եկեսցէ ընտիր ընտիր
ընչից ամենայն ազգաց, եւ լցուցից
զտունդ զայդ փառօք, ասէ Տէր ամե-
8 նակալ։ Իմ է արծաթ եւ իմ է ոսկի,
9 ասէ Տէր ամենակալ։ Զի մեծ եղիցին
փառք տանդ այդորիկ վերջինք քան
զառաջինն, ասէ Տէր ամենակալ. եւ ի
տեղւոջդ յայդմիկ տաց խաղաղութիւն,
ասէ Տէր ամենակալ. [2]եւ խաղաղու-
թիւն ոգւոյ, փրկութիւն ամենայնի՝ որ
գործիցէ յարուցանել զտաճարդ զայդ"
10 Ի քսաներորդի եւ չորրորդի՝ իններ-
որդի ամսեանն, յամի երկրորդի Դա-
րեհի, եղեւ բան Տեառն առ Անգէ մար-
11 գարէ, եւ ասէ, Այսպէս ասէ Տէր ամե-
նակալ. [3]Հարց օրէնս ի քահանայիցդ
12 եւ ասասցես, Եթէ առնուցու մարդ միս
սուրբ ի գրոչակ հանդերձի իւրոյ, եւ
մերձեսցի [4]ծործք իւր" ի հաց կամ ի
թան կամ ի գինի կամ յիւղ, կամ յամե-
նայն կերակուրս, իցէ՞ թէ սրբեսցի։
Պատասխանի ետուն քահանայքն եւ ա-
13 սեն, Ոչ։ Եւ ասէ Անգէոս, Թէ մերձե-
նայցէ պիղծն [2]կամ անսուրբն" ոգւով
յամենայն ինչ յայնպիսեաց՝ իցէ՞ թէ
պղծեսցի։ Պատասխանի ետուն քահա-
14 նայքն եւ ասեն, Պղծի։ Պատասխանի
ետ Անգէոս եւ ասէ,
Նոյնպէս եւ ժողովուրդս այս, նոյն-
պէս եւ ազգս այս առաջի իմ, ասէ
Տէր. նոյնպէս եւ ամենայն գործք ձե-
ռաց նոցա, որ ինչ մերձենայցէ անդր՝
պղծեսցի, [2]վասն առիցն իւրեանց ա-
ռաւօտուց. եւ մորմոքեսցին յերեսաց
չարեացն իւրեանց, եւ ատէիք ի դրունս
15 զյանդիմանիչսն" Եւ արդ դիք ի սիրտ
ձեր յօրէ յայսմանէ եւ յառաջ. մինչեւ
եղեալ քար ի քարի վերայ տաճարիդ
16 Տեառն [2]ո՞վ էիք". Յորժամ արկանէիք
յամանս ձեր քսան քոռ գարւոյ, եւ լի-
նէր տասն քոռ գարւոյ. եւ մուծանէիք
ի հնծանս ձեր հանել յիսուն մար, եւ
17 լինէր քսան։ Հարի զձեզ անպտղու-
թեամբ եւ խորշակաւ եւ կարկտիւ եւ
զամենայն գործս ձեռաց ձերոց, եւ ոչ
18 դարձարուք առ իս, ասէ Տէր։ Կարգե-
ցէք զսիրտս ձեր յօրէ յայսմանէ եւ
անդր. ի քսաներորդէ եւ չորրորդէ ին-
ներորդի ամսեանն, եւ յօրէ յայդմանէ
յորում անկաւ հիմն տաճարիդ Տեառն,
19 դիք ի սիրտս ձեր. [5]Իցէ թէ յայտնեսցի
ինչ ի վերայ կալոյ եւ յորթ, եւ ի
թզենի եւ ի նռնենի, եւ ի փայտ իւ-
ղոյ որ պտուղ ոչ տային". յօրէ յայս-
մանէ օրհնեցից։
20 Եւ եղեւ բան Տեառն կրկին անգամ
առ Անգէ մարգարէ, ի քսան եւ ի չորս
21 ամսոյն, եւ ասէ, Ասա ցԶորաբաբէլ
[6]Սաղաթիելի յազգէ Յուդայ, Դարձեալ
միւսանգամ" շարժեմ զերկինս եւ զեր-
22 կիր, [2]զծով եւ զցամաք," Եւ կործանե-
ցից զաթոռս [7]թագաւորաց, եւ սատա-
կեցից զզօրութիւնս ազգաց [7]թագաւո-
րաց, եւ կործանեցից զկառս եւ [8]զհեծ-
եալս, եւ իջցեն" երիվարք եւ հեծեալք
նոցա՝ իւրաքանչիւր սրով [9]առ եղբայր
23 իւր"։ Յաւուր յայնմիկ, ասէ Տէր ամե-
նակալ, առից զքեզ, Զորաբաբէլ Սա-
ղաթիելի, ծառայ [10]իմ, եւ եդից զքեզ
իբրեւ զկնիք. զի ընդ քեզ հաճեցայ,
ասէ Տէր ամենակալ։

---

[1]Եբր. Փոքր մեւս եւս եւ [2]Յեբր. պակասէ [3]Եբր. Աղէ, Հարց [4]Եբր. քղանցիւ իւրով

[5]Եբր. Իցէ՞ տակաւին սերմն ի շտեմարանի. եւ դեռ որթ եւ թզենի եւ նռնենի եւ ձիթենի պտուղ ոչ ետուն [6]Եբր. ցիշխան Յուդայ, Նա [7]Եբր. թագաւորութեանց [8]Եբր. զհեծեալս նորա, եւ անկցին [9]Եբր. եղբօր իւրոյ [10]Եբր. իմ, ասէ Տէր

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ԶԱՔԱՐԻԱՅ



## ԳԼՈՒԽ Ա

1 ՅԱՄՍԵԱՆՆ ութերորդի՝ յամի երկ-
րորդի Դարեհի արքայի, եղեւ բան
Տեառն առ Զաքարիա մարգարէ որդի
Բարաքեայ, որդւոյ Ադդովայ, եւ ասէ,
2 Բարկացաւ Տէր ի վերայ հարցն ձերոց
3 բարկութիւն մեծ: Եւ ասասցես ցնոսա,
Այսպէս ասէ Տէր [1]ամենակալ. Դարձա-
րուք առ իս, ասէ Տէր զօրութեանց,
եւ դարձայց առ ձեզ, ասէ Տէր զօրու-
4 թեանց: Եւ մի՛ լինիք իբրեւ զհարս
ձեր, [2]զորս սպառնայէին” մարգարէքն
առաջինք, եւ ասէին, Այսպէս ասէ Տէր
ամենակալ. Դարձարուք յամենայն ճա-
նապարհաց ձերոց չարաց, եւ ի գնացից
ձերոց չարաց. եւ ոչ լուան, եւ ոչ ան-
5 սացին լսել ինձ, ասէ Տէր: Հարքն ձեր
ո՞ւր են, եւ մարգարէքն միթէ յաւիտ-
6 եա՞ն կեցին: Բայց [3]զբանս իմ եւ զօրէնս
իմ ընկալարուք, զոր ես պատուիրեմ
Հոգւով իմով ծառայից իմոց մարգարէից
որ ժամանեցին հարցն ձերոց: Պատաս-
խանի ետուն” եւ ասեն, Որպէս կարգ-
եաց Տէր ամենակալ առնել[4] ըստ ճա-
նապարհաց մերոց եւ ըստ գնացից մե-
րոց, նոյնպէս եւ արար մեզ:
7 Ի քսաներորդի եւ չորրորդի մետա-
սաներորդ ամսեանն, որ է ինքն [5]Սաբաթ,
յերկրորդ ամի Դարեհի, եղեւ բան
Տեառն առ Զաքարիա մարգարէ Բա-
8 րաքեայ որդւոյ Ադդովայ, եւ ասէ, Տեսի
ի տեսլեան գիշերոյ, եւ ահա այր մի
հեծեալ յաշխէտ ձի, եւ կայր ի մէջ
[6]երկուց անտառախիտ լերանցն”, եւ զկնի
նորա ձիք աշխէտք եւ պիսակք եւ
9 սպիտակք: Եւ ասեմ, Զի՞նչ են դոքա,
Տէր. եւ ասէ ցիս հրեշտակն՝ որ խօսէր
յիս, Ես ցուցից քեզ զինչ են դոքա:
10 Պատասխանի ետ այրն որ կայր ի մէջ
[7]լերանցն՝ եւ ասէ ցիս”, Դոքա են զորս
11 առաքեաց Տէր շրջել ընդ երկիր: Պա-
տասխանի ետուն հրեշտակին Տեառն՝
որ կայր ի մէջ [8]լերանցն, եւ ասեն,
Շրջեցաք ընդ ամենայն երկիր, եւ ահա
ամենայն երկիր բնակեալ եւ դադար-
12 եալ է: Պատասխանի ետ [9]հրեշտակն եւ
ասէ, Տէր ամենակալ, մինչեւ ցե՞րբ ոչ
ողորմեսցիս ի վերայ Երուսաղեմի եւ քա-
ղաքացն Յուդայ, [10]զորս անտես արարեր
13 այս եւթանասներորդ” ամ: Եւ պատաս-
խանի ետ Տէր [11]ամենակալ հրեշտակին,
որ խօսէր յիս՝ բանս բարեաց եւ բանս
14 մխիթարութեան: Եւ ասէ ցիս հրեշտակն
որ խօսէր յիս, Աղաղակեա եւ ասա,
Այսպէս ասէ Տէր ամենակալ. Նա-
խանձեցայ վասն Երուսաղեմի եւ վասն
15 Սիոնի նախանձ մեծ. Եւ բարկութեամբ
մեծաւ բարկացեալ եմ ի վերայ ազգացն
որ [12]միանգամայն հարան ի վերայ նոցա.
փոխանակ զի ես սակաւիկ ինչ բարկա-
ցեալ էի ի վերայ նոցա, եւ նոքա միան-
16 գամայն հարան ի վերայ” ի չարիս: Վասն
այնորիկ այսպէս ասէ Տէր. Դարձայց
առ Երուսաղէմ գթութեամբ, եւ տունն
իմ վերստին [13]շինեսցի, ասէ Տէր ամե-
նակալ. եւ չափ ձգեսցի միւսանգամ ի
17 վերայ Երուսաղեմի: [14]Եւ ասէ ցիս հրեշ-
տակն որ խօսէր յիս” աղաղակեա եւ
ասա, Այսպէս ասէ Տէր ամենակալ.
Դարձեալ զեղցին [15]քաղաքք բարու-
թեամբ, եւ ողորմեսցի Տէր Սիոնի, եւ
հաճեսցի միւսանգամ ընդ Երուսաղէմ”:

---

[1] Եբր. զօրութեանց, այսպէս և այլուր [2] Եբր. առ որս գոչէին [3] Եբր. բանք իմ և օրէնք իմ զորս պատուիրեալ էր իմ ծառայից իմոց մարգարէից՝ ո՞չ ապաքէն ժամանեցին հարցն ձերոց. իսկ նոքա դարձան [4] Եբր. [illegible], մեզ [5] Եբր. Սեբաթ [6] Եբր. մրտենեաց որ ի ձորի անդ

[7] Եբր. մրտենեացն եւ ասէ [8] Եբր. մրտենեացն [9] Եբր. Հրեշտակն Տեառն [10] Եբր. որոց բարկացար զայս եւթանասուն [11] Յեբր. պակասէ [12] Եբր. որ են ի հանգստեան, զի ես սակաւիկ ինչ բարկացեալ էի, եւ նոքա օգնական եղեն [13] Եբր. շինեսցի ի նմա [14] Եբր. Դարձեալ [15] Եբր. քաղաքք իմ բարութեամբ, և մխիթարեսցէ Տէր միւսանգամ զՍիոն, եւ ընտրեսցէ միւսանգամ զԵրուսաղէմ

18 Եւ ամբարձի զաչս իմ եւ տեսի, եւ
19 ահա չորք եղջեւրք։ Եւ ասեմ ցհրեշ-
տակն որ խօսէր յիս, Զի՞նչ են այդո-
քիկ, [1]տէր։ Եւ ասէ ցիս, Այդ եղջեւրք
են որ ցրուեցին զՅուդա եւ զԻսրայէլ[2]։
20 Եւ եցոյց ինձ Տէր չորս հիւսունս։
21 Եւ ասեմ, Իսկ դոքա զի՞նչ գան գոր-
ծել. եւ ասէ ցիս, Այդ եղջեւրք են որ
ցրուեցին զՅուդա [3]եւ զԻսրայէլ խոր-
տակեցին, եւ ոչ ոք ի նոցանէ ամբարձ
զգլուխ իւր. եւ ելին սոքա սրել զնոսա
ի ձեռս նոցա, զչորս եղջեւրս՝ զազգա-
յարուցեալս եղջեւր ի վերայ երկրի
Տեառն" ցրուել զնա։

Գլ. Բ

1 Եւ ամբարձի զաչս իմ եւ տեսի, եւ
ահա այր, եւ ի ձեռին իւրում ունէր
2 լար երկրաչափի։ Եւ ասեմ ցնա, Ո՞ւր
երթաս։ Եւ ասէ ցիս, Չափել զԵրու-
սաղէմ, եւ տեսանել թէ որչափ է լայ-
նութիւն նորա եւ որչափ երկայնու-
3 թիւն։ Եւ ահա հրեշտակն որ խօսէր
յիս՝ [4]կանգնի առեալ կայր". եւ այլ հրեշ-
4 տակ ելանէր ընդ առաջ նորա։ Եւ ասէ
ցնա, Ընթա եւ խօսեաց ընդ երիտա-
սարդին ընդ այնմիկ եւ ասասցես,
[5]Պարզալից չինեսցի" Երուսաղէմ ի
բազմութենէ մարդոյ եւ անասնոյ ի մէջ
5 նորա։ Եւ ես եղէց [6]նմա պարիսպ հրե-
ղէն շուրջանակի, եւ ի փառս [7]բնակե-
ցայց ի միջի նորա։
6 Ո՛, ո՛, փախերուք յերկրէ հիւսիսոյ,
ասէ Տէր, զի [8]ի չորից հողմոց երկնից
7 ժողովեցից զձեզ, ասէ Տէր. Ի Սիոն
զերծեալ ապրեցարուք, բնակիչք" դստերն
8 Բաբելոնի։ Զի այսպէս ասէ Տէր ամե-
նակալ. Զփառաց զկնի արձակեաց զիս
յազգսն՝ որ կողոպտեցին զձեզ. զի որ
մերձենայ ի ձեզ՝ որպէս որ [9]ընդ հար-
9 կանիցի ընդ բիբական իւրոյ"։ Զի ա-
հաւասիկ ես [10]ածից զձեռն իմ ի վերայ

[1] Յեբր. դալուկ [2] Եբր. զԻսրայէլ, և զԵրուսաղէմ [3] Եբր. մինչեւ ոչ ուրուք ամբառնալ զգլուխ իւր. իսկ նոքա եկին զարհուրեցուցանել զնոսա, ընկենուլ զեղջեւրս ազգացն որ ածէին եղջեւր ի վերայ երկրին Յուդայ [4] Եբր. եւ [5] Եբր. Անպատսպարան բնակեսցէ [6] Եբր. նմա, ասէ Տէր. [7] Եբր. եղէց [8] Եբր. ըստ չորից հողմոց երկնից ցրուեցի զձեզ, ասէ Տէր։ (7) Աղէ Սիոն, զերծ զքեզ, որ բնակեաց ընդ [9] Եբր. մերձենայցէ ընդ բիբ ական նորա [10] Եբր. շարժեցից

նոցա, եւ եղիցին յաւար [11]ծառայեցու-
ցիչքն նոցա". եւ ծանիջիք թէ Տէր ա-
10 մենակալ առաքեաց զիս։ Խնդա եւ ու-
րախ լեր, դուստր Սիոնի. զի ահա ես
եկից եւ բնակեցայց ի միջի քում, ասէ
11 Տէր։ Եւ [12]ապաւինեսցին ազգք բազումք
ի Տէր յաւուր յայնմիկ, եւ եղիցին [13]նմա
ժողովուրդ, եւ բնակեսցին" ի միջի քում.
եւ ծանիցես թէ Տէր ամենակալ առաք-
12 եաց զիս առ քեզ։ Եւ ժառանգեսցէ
Տէր զՅուդա զբաժին իւր յերկրին
սրբութեան, եւ [14]հաճեսցի միւսանգամ
13 ընդ Երուսաղէմ. Եւ երկիցէ ամենայն
մարմին յերեսաց Տեառն, զի զարթուց-
եալ է յամպոց սրբոց իւրոց։"

Գլ. Գ

1 Եւ եցոյց ինձ Տէր զՅեսու քահանայ
մեծ, զի կայր առաջի հրեշտակին Տեառն.
եւ Սատանայ կայր ընդ աջմէ նորա հա-
2 կառակել ընդ նմա։ Եւ ասէ Տէր ցՍա-
տանայ, Սաստեսցէ ի քեզ Տէր, Սա-
տանայ, եւ սաստեսցէ Տէր ի քեզ՝ որ
ընտրեացն զԵրուսաղէմ. ո՞չ ապաքէն դա
ուագիկ իբրեւ զխանձող մի զերծեալ
ի հրոյ։
3 Եւ Յեսու էր զգեցեալ հանդերձս
աղտեղիս, եւ կայր առաջի հրեշտակին
4 [1]Տեառն։ Պատասխանի ետ եւ ասէ
ցայնոսիկ որ կային առաջի նորա, Ի
բաց արարէք զհանդերձս աղտեղիս ի
նմանէ. եւ ասէ ցնա, Ահա բարձի ի
քէն զանօրէնութիւնս քո. եւ [15]ագու-
5 ցէք դմա պճղնաւոր. Եւ դիք" խոյր
սուրբ ի գլուխ դորա. եւ եդին խոյր
սուրբ ի գլուխ նորա, եւ զգեցուցին նմա
հանդերձս. եւ հրեշտակ Տեառն կայր։
6 Եւ դնէր վկայութիւն հրեշտակն
7 Տեառն ընդ Յեսուայ եւ ասէր, Այսպէս
ասէ Տէր ամենակալ. Եթէ ի ճանա-
պարհս իմ գնասցես, եւ զհրամանս իմ
պահեսցես, դու դատեսցես զտուն իմ.
եւ [1]եթէ պահեսցես զսրահս իմ, եւ տաց
քեզ [16]որ շրջիցին ի մէջ դոցա որ կանդ
8 ուապիկ"։ Բայց լուր, Յեսու քահանայ

[11] Եբր. ծառայից իւրեանց [12] Եբր. յարեսցին [13] Եբր. ինձ ի ժողովուրդ, եւ ես բնակեցայց [14] Եբր. ընտրեսցէ միւսանգամ զԵրուսաղէմ։ (13) Լուռ լեր, ամենայն մարմին, առաջի Տեառն, զի զարթուցեալ է ի բնակութենէ սրբութեան իւրոյ։ [15] Եբր. ագուցից քեզ հանդերձ պատուական։ (5) Եւ ասացի զի դիցեն [16] Կամ, առաջնորդս ի միջի դոցա որ կանդ

մեծ, դու եւ մերձաւորք քո որ նստինդ
առաջի քո. զի արք [1]կիսահմայք՛՛
են, զի ահաւասիկ ես ածեմ զծառայ
9 իմ [2]զԾագումն։ Զի զվէմն զոր եդու
առաջի երեսաց Յեսուայ, ի վերայ
վիմին եւթն աչք են. ահաւասիկ ես
[3]փորեցից խարխարատ, ասէ Տէր ա-
մենակալ, եւ շօշափեցից զամենայն ա-
նօրէնութիւն երկրին այնորիկ յաւուր
10 միում՛՛։ Յաւուր յայնմիկ, ասէ Տէր
ամենակալ, կոչեսջիք ամենեքեան զըն-
կեր իւր ընդ որթով եւ ընդ թզենեաւ։

## Գլ. Դ

1 Եւ դարձաւ հրեշտակն որ խօսէր ցիս,
եւ զարթոյց զիս՝ զոր օրինակ յորժամ
2 զարթնուցու այր ի քնոյ իւրմէ։ Եւ
ասէ ցիս, Զի՞նչ տեսանես դու. եւ
ասեմ, Տեսանեմ ահա աշտանակ ոսկի
ձոյլ, եւ գունդ ի վերայ նորա. եւ եւթն
ճրագ ի վերայ նորա, եւ եւթն բերանք
3 ճրագացն որ ի վերայ նորա. Եւ [4]երկու
ձիթենիք ի վերայ նորա, մի ընդ աջմէ
գնդին լուցելոյ՛՛, եւ մի ընդ ահեկէ։
4 Հարցի, եւ ասեմ ցհրեշտակն որ խօսէր
5 ցիս, Զի՞նչ են այդոքիկ, տէր։ Պատաս-
խանի ետ հրեշտակն որ խօսէր ցիս՝ եւ
ասէ ցիս, Ո՞չ գիտես զինչ են այդոքիկ.
6 եւ ասեմ, Ոչ, տէր։ Պատասխանի ետ
հրեշտակն եւ ասէ ցիս, Այս բան Տեառն
է առ Զօրաբաբէլ. ասէ, Ոչ զօրու-
թեամբ [5]մեծաւ եւ ոչ ուժգնութեամբ,
այլ Հոգւով իմով, ասէ Տէր ամենակալ։
7 Ո՞վ ես դու, լեառն [6]մեծ կանգնեալ ա-
ռաջի Զօրաբաբելի, եւ հանից զվէմն
ժառանգութեան զհաւասարութիւն շնոր-
հաց շնորհել՛՛ նմա։
8 Եւ եղեւ բան Տեառն առ իս եւ ասէ,
9 Ձեռք Զօրաբաբելի հիմն արկին տանս
այսմիկ, եւ ձեռք նորա կատարեսցեն
զդա. եւ ծանիցես՝ թէ Տէր ամենակալ
10 առաքեաց զիս առ [7]քեզ։ Քանզի ո՞վ է
որ անարգեաց [8]զաւուրս փոքունս,
եւ խնդասցէ՛՛ եւ տեսցեն զվէմն անագ-
եայ ի ձեռին Զօրաբաբելի. [9]այս են եւթն
աչքն որ հային՛՛ ընդ ամենայն երկիր։
11 Պատասխանի ետու եւ ասեմ ցնա,
Իսկ զի՞նչ են երկու ձիթենիքն որ կան
ընդ աջմէ եւ ընդ ահեկէ աշտանակին։
12 Եւ հարցի կրկին եւ ասեմ ցնա, Զի՞նչ են
երկու ոստք ձիթենեացն [10]որ ի ձեռս
երկուց ճրագարերանացն ոսկեաց՝ արկա-
նելեաց եւ ի վեր հանելեաց զճաշակսն
13 ոսկիս։ Եւ ասէ ցիս՛՛, Ո՞չ գիտես զի՞նչ
են այդոքիկ. եւ ասեմ, Ոչ, տէր։ Եւ ասէ
14 ցիս, Դոքա են [11]որդիք պարարտութեան՛՛
որ կան առաջի Տեառն ամենայն երկրի։

## Գլ. Ե

1 Եւ դարձայ ամբարձի զաչս իմ եւ տեսի,
2 եւ ահա [12]գերանդի թռուցեալ։ Եւ ասէ
ցիս, Զի՞նչ տեսանես. եւ ասեմ, [12]Գե-
րանդի թռուցեալ տեսանեմ ես, քսան
կանգուն յերկայնութիւն, եւ տասն
3 կանգուն ի լայնութիւն։ Եւ ասէ ցիս,
Այդ են անէծք որ ելանեն ի վերայ երե-
սաց ամենայն երկրի. զի ամենայն[13]գո-
ղոյ վրէժ մահու չափ զոլաւ խնդրեսցի,
եւ ամենայն ստերդման վրէժ մահու-
4 չափ զոլաւ խնդրեսցի՛՛։ Եւ հանից զգա,
ասէ Տէր ամենակալ, եւ մացէ ի տունս
գողոց, եւ ի տունս որ երդնուցուն սուտ
յանուն իմ, եւ բնակեսցէ ի մէջ տան
նորա, եւ վախճանեսցէ զնա, եւ զփայտ
նորա եւ զքարինս նորա։
5 Եւ ել հրեշտակն որ խօսէր ցիս, եւ
ասէ ցիս, Հայեաց աչօք քովք եւ տես
զայն որ ելանէ. եւ ասեմ, Զի՞նչ է։
6 Եւ ասէ ցիս, Այդ է [14]չափ որ ելանէ.
եւ ասէ, Այդ է [15]անիրաւութիւն նոցա
7 ընդ ամենայն երկիր։ Եւ ահա [16]կշիռ մի
կապարեայ ամբարձեալ, եւ կին մի նստէր
8 ի մէջ [17]չափոյն։ Եւ ասէ, Այդ է անի-
րաւութիւն. եւ ընկէց զնա ի մէջ [17]չա-
փոյն եւ ընկէց զվէմն կապարեայ ի բե-
9 րան նորա։ Եւ ամբարձի զաչս իմ եւ
տեսի, եւ ահա երկու կանայք ելանէին,

[1] Ոմն. նշանաց [2] Ոմն. զԾագաւորն [3] Ոմն. բացից զբացուած նորա, ասէ Տէր զօրութեանց, եւ բարձից զանօրէնութիւն երկրին ի միում աւուր [4] Ոմն. ձիթենիք երկուք առ նմին, մի ընդ աջմէ գնդին [5] Ոմն. զօրու [6] Ոմն. մեծ, առաջի Զօրաբաբելի. եղիցի ի դաշտ. նա հանցէ զվէմն գլխաւոր, աղաղակաւ, Շնորհք, շնորհք [7] Ոմն. ձեզ [8] Ոմն. զօրն փոքունց. և խնդասցեն

[9] Ոմն. եւթանեքին այնոքիկ, սոքա են աչք Տեառն որ յածին [10] Ոմն. առընթեր երկուց բերանոցն (կամ, խողովակացն) ոսկեաց որ հեղուն յինքեանց զոսկին (այլք՝ զձէթն ոսկեգոյն)։ (13) Եւ խօսեցաւ առ իս եւ ասէ [11] Ոմն. երկու որդիք ձիթոյ, այլք՝ երկու օծեալք [12] Ոմն. մագաղաթ [13] Ոմն. գող սպանցի ըստ ֆրոյ այսր կողման, եւ ամենայն երդուող սպանցի ըստ ֆրոյ այնր կողման [14] Ոմն. արդու [15] Ոմն. ակն, այլք՝ նմանութիւն [16] Ոմն. քանքար [17] Ոմն. արդուին

եւ հողմ ի թեւս նոցա. եւ էին թեւք
նոցա իբրեւ զթեւս [1]յոպոպոյ. եւ ամ-
բարձին [2]զչափն ընդ երկիր եւ ընդ եր-
10 կինս ։ Եւ ասեմ ցհրեշտակն որ խօսէր
11 յիս, Յո՞ տանին նոքա [2]զչափն։ Եւ ասէ
ցիս, Շինել նմա տուն յերկրին [3]Բաբե-
լոնացւոց, եւ պատրաստել. եւ դիցեն զնա
անդ՝ ի վերայ պատրաստութեան" իւրոյ ։

Գլ. Զ

1 Դարձայ ամբարձի զաչս իմ եւ տեսա-
նէի, եւ ահա չորք կառք ելանէին ի մի-
ջոյ երկուց լերանց, եւ լերինքն էին
2 լերինք պղնձիք ։ Ի կառսն առաջինս ձիք
աշխէտք, եւ ի կառսն երկրորդս ձիք
3 սեաւք, Եւ ի կառսն երրորդս ձիք
սպիտակք, եւ ի կառսն չորրորդս ձիք
4 [4]պէսպէս պխակք" ։ Պատասխանի ետու եւ
ասեմ ցհրեշտակն որ խօսէր յիս, Զինչ
5 են այդոքիկ, տէր ։ Պատասխանի ետ
հրեշտակն որ խօսէր յիս՝ եւ ասէ, Դո-
քա են չորք [5]հողմք երկնից, որ ելա-
նեն կալ" առաջի Տեառն ամենայն երկ-
6 րի ։ Յորում էին ձիքն սեաւք, ելանէին
ընդ երկիր հիւսիսոյ, եւ սպիտակքն ե-
լանէին զհետ նոցա, եւ [6]աշխէտքն ելա-
7 նէին ընդ երկիր հարաւոյ. Եւ [7]պխակքն
ելանէին հայէին շրջել ընդ ամենայն"
երկիր. եւ ասէ, Գնացէք եւ շրջեցարուք
ընդ երկիր. եւ շրջեցան ընդ երկիր ։
8 Եւ աղաղակեաց եւ ասէ ցիս, Ահա որ
ելանեն ընդ երկիր հիւսիսոյ, հանգուցին
[8]զսրտմտութիւն իմ յերկրին հիւսիսոյ ։
9 Եւ եղեւ բան Տեառն առ իս, եւ ա-
10 սէ, Առ դու ինձ ի գերութենէ անտի՝
[9]յիշխանաց եւ ի պիտանեաց նորա եւ ի
գիտնոց նորա", եւ մտցես յաւուր յայն-
միկ ի տուն Յովսեայ որդւոյ Սոփոնեայ՝
11 որ եկեալ է ի Բաբելոնէ ։ Եւ առցես
ոսկի եւ արծաթ, եւ արասցես
պսակս, եւ դիցես ի գլուխ Յեսուայ
12 Յովսեդեկեայ քահանայի մեծի. Եւ ա-
սասցես ցնա, Այսպէս ասէ Տէր ամե-
նակալ. Ահա [10]այր՝ եւ Ծագումն" անուն
նորա, եւ ի ներքոյ իւրմէ ծագեսցէ. եւ

[1] Եբր. արագլի [2] Եբր. զարդուն [3] Եբր. Սե-
նաարայ. եւ հաստատեսցի, եւ դիցի անդր ի
վերայ խարսխի [4] Եբր. պխակք գորշագոյնք [5] Եբր.
ոգիք երկնից որ ելանեն ի կալոյ [6] Եբր. պխակքն
[7] Եբր. գորշագոյնքն ելանէին եւ կամէին երթալ
շրջել ընդ [8] Եբր. զոգի [9] Եբր. ի Հեղդայ,
ի Տուբիայ եւ ի Յեդայեայ. [10] Եբր. այրն որոյ
Շառաւիղ է

13 շինեսցէ [11]զտաճարն Տեառն ։ Եւ նա առցէ
զքաջութիւն," նստցի եւ տիրեսցէ ի
վերայ աթոռոյ իւրոյ. եւ եղիցի քա-
հանայ [12]ընդ աջմէ նորա", եւ խաղաղութեան
խաղաղութեան եղիցի ի մէջ երկոցունց ։
14 Եւ պսակդ եղիցի [13]այնոցիկ՝ որ ակն ու-
նին. եւ պիտանեաց նորա, եւ որոց
ծանուցեն զնա, եւ ի շնորհս որդւոյ Սո-
15 փոնեայ եւ յերգս սաղմոսի" Տեառն ։ Եւ
հեռաւորք ի նոցանէ եկեսցեն եւ շինես-
ցեն [14]զտունն Տեառն. եւ ծանիջիք թէ
Տէր ամենակալ առաքեաց զիս առ ձեզ.
եւ եղիցի, եթէ լսելով լուիցէք ձայնի
Տեառն Աստուծոյ ձերոյ ։

Գլ. Է

1 Եւ եղեւ յամին չորրորդի Դարեհի ար-
քայի, եղեւ բան Տեառն առ Զաքարիա, որ
օր չորք էին ամսոյն իններորդի, որ է
2 Քասղեւ ։ Եւ առաքեաց [15]ի Բեթելայ Սա-
րասար եւ Արբսեսար՝ թագաւորք եւ արք
3 իւրեանց" աղաչել զՏէր, Եւ ասել ցքա-
հանայսն որ էին ի տանն Տեառն ամե-
նակալի եւ ցմարգարէսն, [16]եթէ Մո՞ւտ
այդր յամսեանն հինգերորդի սրբութիւն.
քանզի արարի զայն զամս բազումս" ։
4 Եւ եղեւ բան Տեառն զօրութեանց առ
5 իս, եւ ասէ, Խօսեաց ընդ ամենայն ժո-
ղովրդեան երկրիդ եւ ընդ քահանայսդ՝
եւ ասասցես, [17]Եթէ պահիցէք եւ կոծի-
ցէք ի հինգերորդս կամ յեօթներորդս
ամսոց. ահա եօթանասուն ամ. միթէ
6 պահս պահեցէք ինձ. Եւ եթէ ուտէք
եւ ըմպէք, ո՞չ ապաքէն դուք ուտէք
7 եւ ըմպէք" ։ Ո՞չ այս բանք են զոր խօ-
սեցաւ Տէր ի ձեռն մարգարէիցն իւրոց
առաջնոց՝ մինչդեռ շէն էր Երուսաղէմ
եւ ի բարութեան, եւ քաղաքք նորա
շուրջանակի եւ [18]լեռնայինքն եւ դաշ-
տայինքն բնակեալ էին ։

[11] Եբր. զտաճարն Տեառն ։ (13) Եւ նա շինեսցէ
զտաճարն Տեառն, եւ նա տարցի զպատիւ, և
[12] Եբր. ի վերայ աթոռոյ իւրոյ [13] Եբր.
Հեղեմայ, և Տուբիայ, եւ Յեդայեայ, եւ
Քենայ որդւոյ Սոփոնեայ, ի յիշատակ ի տա-
ճարին [14] Եբր. ի տաճարին [15] Եբր. Բեթէլ
զՍարասար եւ զՌեգեմմելէք եւ զարս նոցա
[16] Եբր. Միթէ լայցե՞մ յամսեանն հինգերորդի,
զատուցեալ, զոր օրինակ արարի յայնչափ ամաց
հետէ [17] Եբր. Յորժամ պահէիք եւ սգայիք
սուգ ի հինգերորդս եւ յեօթներորդս ամսոց
զայս եօթանասուն ամ, միթէ վասն ի՞մ պա-
հէիք ։ (6) Եւ յորժամ ուտէիք եւ ըմպէիք,
ո՞չ ապաքէն ուտէիք վասն ձեր եւ ըմպէիք
վասն ձեր [18] Եբր. հարաւայինքն

8 Եւ եղեւ բան Տեառն առ Զաքարիա՝
9 եւ ասէ, Այսպէս ասէ Տէր ամենակալ.
Դատաստան արդար դատեցարուք, եւ
ողորմութիւն եւ գթութիւն արարէք
10 իւրաքանչիւր եղբօր իւրոյ. Զայրին եւ
զորբն եւ զպանդուխտն եւ զտնանկն
մի՛ յաղթահարէք, եւ ոխս չարեաց ըն-
կերի իւրում մի՛ ոք կալցի ի սիրտ իւր։
11 Եւ ոչ հաւանեցան անսալ. այլ ետուն
զթիկունս [1]իւրեանց ի յիմարութիւն˝, եւ
ծանրացուցին զականջս իւրեանց առ ի
12 չլսել. Եւ զսիրտս իւրեանց [2]կարգեցին
անհնազանդս˝, առ ի չլսելոյ օրինաց
[3]իմոց եւ բանից զոր առաքեաց Տէր ա-
մենակալ Հոգւով իւրով ի ձեռն մար-
գարէիցն առաջնոց. եւ եղեւ բարկու-
13 թիւն մեծ ի Տեառնէ ամենակալէ։ Եւ
[4]եղիցի զոր օրինակ խօսեցան՝ եւ˝ ոչ
լուան նմա, նոյնպէս աղաղակեսցեն,
եւ ոչ [5]լուիցէ նոցա˝, ասէ Տէր ամենա-
14 կալ։ Եւ [6]հանից զնոսա ընդ ամենայն
ազգս զորս ոչ գիտիցեն, եւ երկիրդ
ապականեսցի զկնի նոցա, զի ոչ ոք իցէ
որ ելանիցէ, եւ դառնայցէ. եւ եդին
զերկիրն ընտիր յապականութիւն˝։

ԳԼ. Ը

1 Եւ եղեւ բան Տեառն ամենակալի առ
իս, եւ ասէ, Այսպէս ասէ Տէր ամե-
2 նակալ. Նախանձեցայ [3]վասն Երուսա-
ղեմի եւ˝ վասն Սիոնի նախանձ մեծ,
եւ բարկութեամբ մեծաւ նախանձեցայ
3 վասն նորա։ Այսպէս ասէ Տէր. Դար-
ձայց ի Սիոն եւ բնակեցայց ի մէջ Ե-
րուսաղեմի. եւ կոչեսցի Երուսաղէմ
Քաղաք ճշմարիտ, եւ լեառն Տեառն
ամենակալի Լեառն սուրբ։
4 Այսպէս ասէ Տէր ամենակալ. Դար-
ձեալ նստցին ծերք եւ պառաւունք ի
հրապարակս Երուսաղեմի, իւրաքան-
չիւր ցուպ ի ձեռին իւրում ի բազմու-
5 թենէ աւուրց. Եւ հրապարակք քաղա-
քին լցցին պատանեօք եւ աղջկամբք
որ խաղայցեն ի հրապարակս նորա։
6 Այսպէս ասէ Տէր ամենակալ. Եթէ
[7]տկարանայցէ ինչ առաջի˝ մնացորդաց

[1] Եբր. ի հեռանալ [2] Եբր. սրտերն ադամանդեայս
[3] Յեբր. դ—ձ—ն [4] Եբր. եղեւ զի որպէս նա կոչեաց. եւ նոքա [5] Եբր. լուայց [6] Եբր. ցրուեցի զնոսա մրրկաւ ընդ ամենայն ազգս զորս ոչ գիտէին. և երկիրդ ամայացաւ յետ նոցա առ ի չգոյէ անցելոց եւ դարձելոց. այսպէս արարին ամայի զերկիրն ցանկալի [7] Եբր. զարմանալի իցէ յաչս

ժողովրդեանդ այդորիկ յաւուրսն յայնո-
սիկ, միթէ եւ [8]առաջի՞ իմ տկարանայ-
ցէ˝, ասէ Տէր ամենակալ։
7 Այսպէս ասէ Տէր ամենակալ. Ահա-
ւասիկ ես փրկեմ զժողովուրդ իմ յերկ-
8 րէ արեւելից եւ յերկրէ արեւմտից. Եւ
ածից զնոսա եւ բնակեցուցից ի մէջ Ե-
րուսաղեմի, եւ եղիցին ինձ ժողովուրդ,
եւ ես եղէց նոցա Աստուած ճշմարտու-
թեամբ եւ արդարութեամբ։
9 Այսպէս ասէ Տէր ամենակալ. Զօ-
րասցին ձեռք ձեր որ լսէքդ յաւուրս
յայսոսիկ զբանս զայս ի բերանոյ մար-
գարէիցն, յօրէ յորմէ արկէք հիմն տան
Տեառն ամենակալի, եւ տաճարս յորմէ
10 հետէ շինեցաւ։ Զի յառաջ քան զա-
ւուրսն զայնոսիկ՝ վարձք մարդկան ոչ
էին [3]յօգուտ, եւ վարձք անասնոց ոչ
էին [3]յարդի, եւ ելողի եւ մտողի ոչ էր
խաղաղութիւն ի նեղութենէ. [9]եւ առա-
քեցից˝ զամենայն մարդիկ իւրաքանչիւր
11 առ ընկեր իւր։ Եւ արդ ոչ ըստ աւուրցն
առաջնոց առնեմ ես մնացորդաց ժո-
ղովրդեանդ այդորիկ, ասէ Տէր ամենա-
12 կալ։ Այլ [10]ցուցից խաղաղութիւն˝. այգի
տացէ զպտուղ իւր, եւ երկիր տացէ
զարմտիս իւր, եւ երկինք տացեն զցօղ
իւրեանց, եւ ժառանգեցուցից մնացոր-
դաց ժողովրդեան իմոյ զայս ամենայն։
13 Եւ եղիցի որպէս էիքն յանէծս ի մէջ
ազգաց տունդ Յուդայ եւ տունդ Իս-
րայէլի, նոյնպէս ապրեցուցից զձեզ, եւ
եղիջիք յօրհնութիւն. քաջալերեցարուք
14 եւ զօրասցին ձեռք ձեր։ Զի այսպէս
ասէ Տէր ամենակալ. Որպէս խորհեցայ
չարչարել զձեզ՝ ի բարկացուցանել զիս
հարցն ձերոց, ասէ Տէր ամենակալ, եւ
15 ոչ զղջացայ, Նոյնպէս [11]սպառնացեալ
եւ խորհեալ եմ յաւուրս յայսոսիկ բարի
առնել Երուսաղեմի եւ տանդ Յուդայ.
16 քաջալերեցարուք։ Այս բանք են զոր
առնիցէք. Խօսեցարուք զճշմարտութիւն
իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում, եւ
դատաստան խաղաղութեան եւ արդար
17 դատեցարուք ի դրունս ձեր. Եւ իւրա-
քանչիւր չար ընկերի իւրում մի՛ խոր-
հիք ի սիրտս ձեր, եւ զերդումն սուտ
մի՛ սիրէք. զի զայն ամենայն ատեցի,
ասէ Տէր ամենակալ։

[8] Եբր. յաչս իմ իցէ զարմանալի [9] Եբր. զի յարուցեալ էր իմ [10] Եբր. եղիցի սերմն խաղաղութեան [11] Եբր. դարձայ

18 Եւ եղեւ բան Տեառն ամենակալի առ
19 իս՝ եւ ասէ, Այսպէս ասէ Տէր ամենա-
կալ. Պահքն չորրորդք եւ պահքն հին-
գերորդք, պահքն եւթներորդք եւ պահքն
տասներորդք՝ եղիցին տանդ Յուդայ ի
խնդութիւն եւ յուրախութիւն եւ ի տօնս
բարութեանց. [1]եւ ուրախ լինիջիք," եւ
զճշմարտութիւն եւ զխաղաղութիւն
սիրեցէք։
20 Այսպէս ասէ Տէր ամենակալ. Դար-
ձեալ եկեսցեն ժողովուրդք [1]բազումք
21 եւ բնակիչք քաղաքաց բազմաց. Եւ
ժողովեսցին բնակիչք միոյ ի միւս քա-
ղաք, եւ ասասցեն՝ [2]Երթիցուք աղա-
չել զերեսս Տեառն, եւ խնդրել [3]զերեսս
Աստուծոյ ամենակալի". երթայց եւ ես.
22 Եւ եկեսցեն ժողովուրդք բազումք
[4]խնդրել զերեսս Տեառն ամենակալի յԵ-
րուսաղէմ, եւ հաշտեցուցանել" զերեսս
23 Տեառն։ Այսպէս ասէ Տէր ամենակալ.
Յաւուրսն յայնոսիկ, բուռն հարկանի-
ցեն այր տասն յամենայն լեզուաց ազ-
գաց, բուռն հարկանիցեն զգրօշակէ
առն Հրէի եւ ասասցեն, Երթիցուք
մեք ընդ [5]քեզ, զի լուաք թէ Աստուած
ընդ [5]քեզ է։

## Գլ. Թ

1 [6]Առած բանի Տեառն յերկիր Սեդրաք,
եւ ի Դամասկոս զոհ նորա. զի Տէր տե-
սանէ զմարդիկ, եւ զամենայն ազգս Իս-
2 րայելի։ Եւ յԵմաթ ի սահմանս նորա,
Տիւրոս եւ Սիդոն, զի արհամարհեցին"
յոյժ։
3 Եւ շինեաց Տիւրոս ամուրս իւր. եւ
կանձեաց զարծաթ իբրեւ զհող, եւ
4 զոսկի իբրեւ զկաւ ճանապարհաց։ Վասն
այնորիկ Տէր [7]ժառանգեսցէ զնա, եւ
ամասցէ ի ծով զզօրութիւն նորա". եւ
նա հրով ծախեսցի։
5 Տեսցէ Ասկաղոն, եւ երկիցէ, եւ Գա-
զա՝ մորմոքեսցի յոյժ, եւ Ակկարոն՝ զի
յամօթ եղեւ [8]ի վերայ յանցանաց իւ-
րոց", եւ կորիցէ թագաւոր ի Գազայ,
6 եւ Ասկաղոն մի՛ բնակեսցի։ Եւ բնա-
կեսցեն [9]այլազգիք յԱզովտոս, եւ քա-
7 կեցից զհպարտութիւն այլազգեաց. Եւ
բարձից զարիւն նոցա ի բերանոյ նոցա,
եւ զպարշելիս նոցա ի միջոյ ատամանց
նոցա. եւ [10]մնասցեն եւ նոքա" Աստու-
ծոյ մերում, եւ եղիցին իբրեւ հազա-
րապետ ի մէջ Յուդայ, եւ Ակկարոն
իբրեւ զՅեբուսացին։
8 Եւ [11]կացուցից տան իմոյ պաշտպան՝
առ ի չանցանելոյ եւ չդառնալոյ", եւ
մի՛ եւս եկեսցէ ի վերայ նոցա որ հա-
լածեսցէ զնոսա. զի այժմ տեսի աչօք
իմովք։
9 Ուրախ լեր յոյժ, դուստր Սիոնի.
[12]քարոզեա, դուստր Երուսաղեմի. ահա
թագաւոր քո գայ առ քեզ, արդար եւ
փրկիչ, նոյն հեզ, եւ հեծեալ ի վերայ
10 իշոյ եւ յաւանակի նորոյ։ Եւ [13]սատա-
կեսցէ զկառս յԵփրեմայ եւ զերիվարս
յԵրուսաղեմէ, եւ խորտակեսցի աղեղն
[14]պատերազմօղ, եւ բազմութիւն եւ խա-
ղաղութիւն յազգաց". եւ տիրեսցէ ջրոց
ի ծովէ մինչեւ ի ծով, եւ ի գետոց մին-
11 չեւ ի ծագս երկրի։ Եւ դու արեամբ
ուխտի քո արձակեցեր" զկապեալս քո
12 յանջրդի գբոյ։ Եւ [15]նստջիք յամուրս
կապեալք ժողովրդեանդ. եւ փոխանակ
միոյ աւուր պանդխտութեան քո" կրկին
13 հատուցից քեզ։ Զի լարեցից [16]զքեզ
ինձ, Յուդա," իբրեւ զաղեղն, լցից եւ
զԵփրեմ. եւ զարթուցից զորդիս քո,
Սիոն, ի վերայ որդւոցն Յունաց, եւ
[17]շօշափեսցից զքեզ իբրեւ զսուսեր [1]պո-
14 ղովատիկ պատերազմողի։ Եւ Տէր [18]ե-
րեւեսցի վերակացու" նոցա, եւ ելցէ իբ-
րեւ զփայլակն նետ նորա. եւ Տէր [19]Տէր
ամենակալ" փող հարցէ, եւ գնասցէ
15 [20]շարժմամբ սպառնալեաց իւրոց." Տէր

---

[1] Եբր. [illegible] [2] Եբր. Երթալով երթիցուք [3] Եբր. զՏէր զօրութեանց [4] Եբր. և ազգք հզօրք խնդրել զՏէր զօրութեանց յԵրուսաղէմ, եւ աղաչել [5] Եբր. ձեզ [6] Եբր. Պատգամ բանի Տեառն վասն երկրին Հադրաքայ, եւ Դամասկոս տեղի հանգստեան նորա, զի առ Տէր աչք մարդոյ եւ ամենայն ազգաց Իսրայելի (Կամ, աչք Տեառն ի վերայ մարդոյ եւ ամենայն ազգաց Իսրայելի)։ (2) Եւ Եմաթ եւս սահմանակից նորա, այլ եւ Տիւրոս եւ Սիդոն, թէպէտեւ իմաստուն են [7] Կամ, վանեսցէ զնա, եւ հարցէ զզօրութիւն նորա որ ի ծովու

[8] Եբր. ի յուսոյ իւրմէ [9] Եբր. պոռնկորդիք [10] Եբր. Մնացորդն՝ այն եւս եղիցի [11] Եբր. բանակեցայց զտամբ իմով ի զօրուէն որ անցանէ եւ դառնայ [12] Եբր. ցնծա [13] Եբր. սատակեցից [14] Եբր. պատերազմի, եւ խօսեսցի խաղաղութիւն ազգաց, եւ իշխանութիւն նորա ի ծովէ մինչեւ ի ծով, եւ ի գետոյն ի ծագս երկրի։ (11) Իսկ վասն քո, արեամբ ուխտի քո արձակեցի [15] Եբր. դարձջիք յամուրս, կապեալք յուսոյ, այսօր ազդ առնեմ զի [16] Եբր. ինձ զՅուդա [17] Եբր. արարից [18] Եբր. երեւեսցի ի վերայ [19] Եբր. Եհովայ [20] Եբր. մրրկօք հարաւոյ

ամենակալ պաշտպանեսցէ նոցա, եւ
սպառեսցեն զնոսա, եւ [1]թաղեսցեն զնո-
սա քարամբք պարսաքարաց. եւ արբ-
ցեն զարիւն նոցա իբրեւ զգինի, եւ
16 լցցեն զտաշտս իբրեւ զսեղանն՟. Եւ
փրկեսցէ զնոսա Տէր Աստուած նոցա
յաւուր յայնմիկ՝ իբրեւ զոչխարս զժո-
ղովուրդ իւր. զի [2]քարինք սուրբ թա-
17 ւալին յերկրի նորա. Զի որ ինչ բարին
իցէ՝ նորա է, եւ որ ինչ լաւն՝ նորին.
ցորեան երիտասարդաց, եւ գինի ա-
նուշարար կուսից։՟

## Գլ. Ժ

1 Խնդրեցէք ի Տեառնէ անձրեւ ըստ ժա-
մանակաց [3]զկանուխ եւ զանագան. Տէր
արար զզարմանալիս, եւ զանձրեւ ձմե-
րայնոյ տացէ նոցա, իւրաքանչիւր խոտ
2 յանդի։ Զի հարցուկք բարբառեցան աշ-
խատութիւնս՟, եւ ըղձապատումք սե-
սիլս սուտս եւ երազս սուտս խօսէին,
եւ ի զուր մխիթարէին. վասն այնորիկ
[4]ցամաքեցան իբրեւ խաշինք, եւ չա-
րաչարեցան, զի ոչ գոյր բժշկութիւն՟։
3 Ի վերայ հովուաց բարկացաւ սրտմտու-
թիւն իմ, եւ ի վերայ [5]գառանց այցե-
լութիւն արարից. եւ այց արասցէ Տէր
[6]Աստուած ամենակալ խաշին իւրոյ տանն
Յուդայ, եւ յարդարեսցէ զնոսա իւր
իբրեւ զերիվար գեղեցիկ պատերազմի։
4 [7]Եւ ի նմանէ զխտեաց, եւ ի նմանէ յար-
դարեաց, եւ ի նմանէ աղեղն իւր բարձ-
րութեամբ. եւ ի նմանէ ելցէ ամենայն
5 որ հալածիցէ ի նոյն։ Եւ եղիցին իբրեւ
զպատերազմօղք՝ որ կոխիցեն զկաւ ի
ճանապարհս պատերազմի՟, եւ ճակա-
տեսցին, զի Տէր ընդ նոսա է, եւ ա-
6 մաչեսցեն հեծեալք յերիվարս։ Եւ զօ-
րացուցից զտունն Յուդայ, եւ զտունն
Յովսեփայ ապրեցուցից, եւ բնակեցու-
ցից զնոսա, զի [8]սիրեցի զնոսա՟. եւ ե-
ղիցին որպէս թէ չիցեմ զարձեալ ի նո-
ցանէ. զի ես եմ Տէր Աստուած նոցա,
7 եւ լուայց նոցա։ Եւ [9]եղիցին իբրեւ
զպատերազմօղսն Եփրեմի՟, եւ խնդաս-
ցէ սիրտ նոցա իբրեւ ի գինւոյ. եւ որ-
դիք նոցա տեսցեն եւ ուրախ լիցին, եւ
8 ցնծասցեն սիրտք նոցա ի Տէր։ Ազդ ա-
րարից նոցա եւ ընկալայց զնոսա, զի
ապրեցուցի զնոսա, եւ բազմասցին որ-
9 պէս էին բազումք։ Եւ սերմանեցից
զնոսա ընդ ազգս, եւ որ հեռա-
ւորքն իցեն՝ յիշեսցեն զիս, [10]սնուսցեն
10 զորդիս՟ իւրեանց եւ դարձցին։ Եւ դար-
ձուցից զնոսա յերկրէն Եգիպտացւոց,
եւ յԱսորեստանեայց ընկալայց զնո-
սա, եւ ի Գաղաադ եւ ի Լիբանան մու-
ծից զնոսա. եւ ոչ [11]պակասեսցէ ի նո-
11 ցանէ եւ ոչ մի։ Եւ անցցեն ընդ ծովն
անձուկ, եւ հարցեն՟ զալիս ծովուն,
եւ ցամաքեսցին ամենայն խորք գե-
տոց. եւ բարձցի ամենայն հպարտու-
թիւն Ասորեստանեայց, եւ իշխանու-
12 թիւն Եգիպտացւոց քակեսցի։ Եւ զօ-
րացուցից զնոսա ի Տէր [6]Աստուած նո-
ցա՟, եւ յանուն նորա [12]պարծեսցին,
ասէ Տէր։

## Գլ. ԺԱ

1 Բաց զդրունս քո, Լիբանան, եւ կե-
2 րիցէ հուր զմայրս քո։ Ողբասցեն սա-
րոյք, զի մայրք գլորեցան, զի [6]մեծա-
պէս մեծամեծք չուառացան. ողբացէք,
կաղնիք Բասանու, զի քակեցաւ ան-
3 տառն տնկախիտ։ Ձայն ողբալոյ հո-
վուաց, զի թշուառացաւ մեծութիւն
նոցա. ձայն գոչելոյ առիւծուց, զի
թշուառացաւ բարձրութիւն Յորդանա-
նու։

4 Այսպէս ասէ Տէր [13]ամենակալ. Արա-
5 ծեա զխաշինս կոտորածի, Զոր սա-
ցողքն [14]կոտորէին. եւ՟ վաճառէին զնո-

[1] Եբր. կախեսցեն ի վերայ պարսաքարաց, և արբցեն, եւ աղաղակեսցեն իբրեւ զարբեցեալ, եւ լցցին իբրեւ տաշտ, իբրեւ զանկիւնս սեղանոյ. [2] Եբր. Եբրէ– գքարինս պսակի բարձրասցին ի վերայ երկրի նորա. (17) Զի քանի՜ մեծ է բարութիւն նորա, եւ քանի՜ն մեծ գեղեցկութիւն նորա. ցորեան զերիտասարդս, եւ գինի անուշարար զկուսանս զուարճացուսցէ։ [3] Եբր. զանագան. Տէր է որ տանէ զփայլատակունս, և տացէ նոցա անձրեւ տեղատարափ, իւրաքանչիւր խոտոյ յանդի։ (2) Զի թերափք խօսեցան զունայնութիւն [4] Եբր. չուեցին իբրեւ խաշինս. տագնապեցան զի ոչ գոյր հովիւ [5] Եբր. նոխազաց [6] Յ Եբր. պակասէ [7] Եբր. Անկիւն, (կամ, իշխան) ի նմանէ, բեւեռ (կամ. գլխաւորն) ի նմանէ, աղեղն պատերազմի ի նմանէ. ի նմանէ ելցէ ամենայն զօրավար միանգամայն։ (5) Եւ եղիցին իբրեւ զհզօրս տանել կոխան իբրեւ զկաւ դաշտաց ի պատերազմի

[8] Եբր. ողորմեցայ նոցա [9] Եբր. եղիցի իբրեւ զհզօր Եփրեմ [10] Եբր. եւ կեցցեն ընդ որդիս [11] Եբր. գտցի նոցա տեղի։ (11) Եւ անցցէ նա ընդ ծով անձկութեան (կամ, անձկութեամբ) եւ հարցէ [12] Եբր. շրջեսցին [13] Եբր. Աստուած իմ [14] Եբր. կոտորէին, եւ ոչ յանցանէին. եւ որ.

սա, ասէին, Օրհնեալ Տէր՝ եւ մեծա-
ցաք. եւ հովուաց նոցա ոչինչ ցաւէր
6 վասն նոցա: [1]Վասն այնորիկ՝՝ ոչ եւս
խնայեցից ի վերայ բնակչաց երկրիդ,
ասէ Տէր. եւ ահաւասիկ ես մատնեցից
զմարդիկ իւրաքանչիւր ի ձեռս ընկերի
իւրոյ եւ ի ձեռս թագաւորի իւրոյ, եւ
հարցեն[2]. եւ ոչ փրկեցից ի ձեռաց նոցա:
7 Եւ [3]հովուեցից խաշինն կոտորելոյ յերկ-
րին Քանանացւոց: Եւ առից ինձ եր-
կուս գաւազանս. զմին կոչեցից Գե-
ղեցկութիւն, եւ զերկրորդն կոչեցից
8 Վիճակ, եւ արածեցից զխաշինսն: Եւ
բարձից՝՝ զերիս հովիւսն ի միում ամ-
սեան, [4]եւ ծանրասցի անձն իմ ի վե-
րայ նոցա. քանզի եւ անձինք նոցա
9 գոչէին ի վերայ իմ՝՝: Եւ ասեմ, Ոչ հո-
վուեցից ձեզ. որ մեռանելոցն է՝ մեռ-
ցի, եւ որ սատակելոցն է՝ սատակես-
ցի. եւ մնացեալքն կերիցեն իւրաքան-
10 չիւր զմարմինս ընկերի իւրոյ: Եւ առի
զգաւազանն իմ զԳեղեցիկ, եւ [5]ընկեցի
զնա՝ ցրել զուխտ իմ զոր եդի առ ամե-
11 նայն ժողովուրդս: Եւ [6]ցրեցաւ յաւուր
յայնմիկ, եւ ծանիցեն Քանանացիքն
զխաշինս պահեստի իմոյ, զի բան
Տեառն է՝՝:
12 Եւ ասացի ցնոսա, Թէ բարւոք թուի
յաչս ձեր՝ տուք զվարձս իմ. ապա թէ
ոչ՝ զրոյց արարէք. եւ կշռեցին զվարձս
13 իմ երեսուն արծաթի: Եւ ասէ ցիս Տէր,
Արկ դու զայդ [7]ի բովս, եւ քննեա թէ
փորձ իցէ, որպէս ես գտայ փորձ վասն
նոցա՝՝: Եւ առի զերեսուն արծաթին,
14 եւ արկի ի տուն Տեառն [8]ի բովս: Եւ
ընկեցի զգաւազանն երկրորդ՝ զՎիճակն,
ցրել զուխտ իմ՝՝ ի մէջ Յուդայ եւ ի մէջ
Իսրայելի:
15 Եւ ասէ ցիս Տէր, Դարձեալ առ դու
քեզ գործի [9]հովուութեան հովուի տգի-
16 տի. Զի ահաւասիկ ես յարուցանեմ
հովիւ [9]տգէտ ի վերայ երկրի. զկոր-
ուսեալն ոչ յանձանձիցէ, եւ զցրուեալն
ոչ խնդրիցէ, եւ զբեկեալն ոչ բժշկես-
ցէ, եւ զողջն ոչ պարմանեսցէ. եւ զմիս
ընտրանացն կերիցէ, եւ զոտս նոցա
17 փշրեսցէ: [10]Ո՛վ տարապարտարոտք, որ
ընդ վայր հարէք՝՝ զխաշինս. սուր ի
բազուկ նորա եւ յակն իւր աջոյ. բա-
զուկ նորա ցօսանալով ցօսասցի, եւ
ակն իւր աջոյ՝ կուրանալով կուրասցի:

## Գլ. ԺԲ

1 [11]Առած բանի Տեառն ի վերայ Իսրա-
յելի: Ասէ Տէր՝ որ ձգեաց զերկինս եւ
արկ հիմունս երկրի, եւ հաստատէ զոգի
2 մարդոյ ի նմա, Ահաւասիկ ես դնեմ զԵ-
րուսաղէմ [12]իբրեւ զսեամս չարժունս՝՝
ամենայն ժողովրդոց որ շուրջ զնովա-
ւիցեն, եւ ի Հրէաստանի [13]եղիցի պաշա-
3 րումն՝՝ Երուսաղեմի: Եւ եղիցի յաւուր
յայնմիկ՝ եդից զԵրուսաղէմ [14]իբրեւ զքար
մի կոխան՝՝ ամենայն հեթանոսաց. ա-
մենայն որ [15]կոխիցէ զնա՝ կատակելով
կատակեսցէ, եւ ժողովեսցին՝՝ ի վերայ
4 նորա ամենայն ազգք երկրի: Յաւուր
յայնմիկ, ասէ Տէր [9]ամենակալ, հարից
զամենայն երիվար սարսափաւ, եւ զհե-
ծեալ նորա յիմարութեամբ. եւ ի վերայ
տանդ Յուդայ բացից զաչս իմ, եւ զա-
մենայն երիվարս ազգաց հարից կու-
5 րութեամբ: Եւ ասասցեն հազարապետք
Յուդայ ի սիրտս իւրեանց, [16]Գտցուք
մեք զբնակիչս՝՝ Երուսաղեմի ի ձեռն
Տեառն ամենակալի Աստուծոյ նոցա:
6 Յաւուր յայնմիկ եդից զհազարապետս
Յուդայ իբրեւ զխանձողս հրոյ ի մէջ
փայտից, եւ իբրեւ զղամբարս հրոյ ի
մէջ եղեգան, եւ կերիցեն յաջմէ եւ
յահեկէ զամենայն ժողովուրդս շուրջա-
նակի. եւ դարձեալ բնակեսցէ Երու-
7 սաղէմ [17]առանձինն յԵրուսաղէմ: Եւ
ապրեցուսցէ Տէր [18]զյարկսն Յուդայ որ-
պէս եւ ի սկզբանէն՝՝. զի մի՛ մեծաբա-
նեսցեն պարծանք տանն Դաւթի, եւ

---

[1]Եբր. Զի [2]Եբր. [illegible], զերկիրն [3]Եբր. Հովուեցի խաշինն որ ի զենուլ է, արդարեւ տառապելոյն խաշանց. եւ առի ինձ երկուս գաւազանս, զմին կոչեցի Գեղեցկութիւն, եւ զերկրորդն կոչեցի Կապանս, և արածեցի զխաշինսն: (8) Եւ բարձի [4]Եբր. զի տաղտկացաւ անձն իմ ի նոցանէ, և անձն նոցա եւս գարշեցաւ յինէն [5]Եբր. բեկի [6]Եբր. ցրեցաւ յաւուր յայնմիկ, եւ ծանեան այսպէս նեղեալքն ի խաշանց որ մնան ինձ, եթէ բան Տեառն է այս [7]Եբր. առ բրուտն (կամ, ի գանձն) գին պատուական որ հատաւ վասն իմ ի նոցանէ [8]Եբր. առ բրուտն (կամ, ի գանձն): (14) Եւ բեկի զգաւազանն երկրորդ՝ զԿապանս ցրել զեղբայրութիւնն որ

[9]Եբր. [illegible] [10]Եբր. Վա՛յ տարապարտ հովուի, որ ընդ վայր հարկանէ [11]Եբր. Պատգամ [12]Եբր. բաժակ թմրութեան [13]Եբր. եւս եղիցի ի պաշարման [14]Եբր. քար ծանրութեան [15]Եբր. առանձնեսցէ զնա՝ խորտակելով խորտակեսցի. եթէ ժողովեսցին եւս [16]Եբր. Զօրութիւն իմ, բնակիչք [17]Եբր. ի տեղւոջ իւրում [18]Եբր. նախ զյարկսն Յուդայ

հպարտութիւն բնակչաց Երուսաղեմի
8 ի վերայ տանն Յուդայ։ Եւ եղիցի յա-
ւուր յայնմիկ պաշտպանեսցէ Տէր ամե-
նայն բնակչաց Երուսաղեմի. եւ եղիցի
որ տկարն իցէ ի նոսա յաւուր յայնմիկ՝
իբրեւ զԴաւիթ, եւ տունն Դաւթի՝ իբրեւ
[1]զտունն Աստուծոյ՝՝, իբրեւ զհրեշտակ
9 Տեառն առաջի նոցա։ Եւ եղիցի յաւուր
յայնմիկ խնդրեցից բառնալ զամենայն
10 ազգս եկեալս ի վերայ Երուսաղեմի։ Եւ
հեղից ի վերայ տանն Դաւթի եւ ի վերայ
բնակչաց Երուսաղեմի հոգի շնորհաց
եւ [2]գթութեան. եւ հայեսցին առ իս
յոր խոցեցինն, եւ կոծեսցեն ի վերայ
նորա կոծ իբրեւ ի վերայ [3]սիրելւոյ, եւ
աշխարեսցեն աշխար իբրեւ ի վերայ
11 անդրանկան։ Յաւուր յայնմիկ մեծա-
կացի կոծ յԵրուսաղէմ իբրեւ զկոծ
12 [4]Նռնենեաց կոտորելոց ի դաշտի՝՝. Եւ
կոծեսցի երկիր ըստ ազգս ազգաց ա-
ռանձինն. ազգ տանն Դաւթի առան-
ձինն, եւ կանայք նոցա առանձինն,
ազգ տանն Նաթանայ առանձինն, եւ
13 կանայք նոցա առանձինն, Ազգ տանն
Ղեւեայ առանձինն, եւ կանայք նոցա
առանձինն, ազգ տանն [5]Շմաւոնի ա-
ռանձինն, եւ կանայք նոցա առանձինն,
14 Ամենայն ազգք մնացեալք առանձինն,
եւ կանայք նոցա առանձինն։

ԳԼ. ԺԳ

1 Յաւուր յայնմիկ եղիցի [6]ամենայն տե-
ղի՝՝ բացեալ տանն Դաւթի՝ [7]ի փոփո-
2 խումն եւ՝ ի սրսկումն՝՝։ Եւ եղիցի յա-
ւուր յայնմիկ [8]բարձցէ Տէր՝՝ զանուանս
կռոց յերկրէ, եւ ոչ եւս եղիցի յիշա-
տակ նոցա. եւ զսուտ մարգարէսն եւ
3 զայսս պիղծս բարձից յերկրէ։ Եւ ե-
ղիցի թէ մարգարէանայցէ ոք տակա-
ւին, եւ ասասցեն ցնա հայր եւ մայր
իւր որ ծնան զնա, Մի՛ կեցցես, զի
սուտ խօսեցար յանուն Տեառն. եւ [9]խա-
փանեսցեն զնա հայր եւ մայր նորա որ
4 ծնան զնա՝ [10]ի մարգարէանալն։ Եւ ե-
ղիցի յաւուր յայնմիկ ամաչեսցեն մար-
գարէքն յիւրաքանչիւր տեսլենէ ի մար-
գարէանալն իւրեանց, եւ [11]զգեցցին
փեղկս մազեղէնս՝ փոխանակ զի ստե-
5 ցին՝՝։ Եւ ասասցէ, Չեմ ես մարգարէ,
այլ այր հողագործ եմ ես, եւ մարդ
6 [12]ծնաւ զիս ի մանկութենէ իմմէ։ Եւ
[13]ասասցիս ցնա, Զի՞նչ են վէրքդ այդո-
քիկ ի մէջ ձեռաց քոց. եւ ասասցէ, Զորս
վիրաւորեցայ ի տան [14]սիրելւոյ իմոյ՝՝։
7 Զարթիր, սուր, ի վերայ Հովուի ի-
մոյ, եւ ի վերայ առն ընկերի [15]նորա,
ասէ Տէր ամենակալ. [16]հարից զՀովիւն
եւ ցրուեսցին խաշինքն, եւ դարձու-
8 ցից զձեռն իմ ի վերայ [17]հովուաց։ Եւ
եղիցի յաւուր յայնմիկ՝՝, ասէ Տէր, եր-
կու մասունք ի նմա սատակեսցին եւ
պակասեսցին, եւ երրորդն մնասցէ ի
9 նմա։ Եւ անցուցից զերրորդ մասն ընդ
հուր, եւ [18]ջեռուցից զնոսա որպէս ջեռ-
նու՝՝ արծաթ. եւ փորձեցից զնոսա որ-
պէս փորձի ոսկի. նա կարդասցէ զանուն
իմ, եւ ես լուայց նմա. եւ ասացից, Ժո-
ղովուրդ իմ է սա. եւ նա ասասցէ,
[19]Տէր Աստուած իմ ես դու՝՝։

ԳԼ. ԺԴ

1 Ահա [20]աւուրք Տեառն եկեսցեն՝՝, եւ բա-
2 ժանեսցի աւարն քո [21]ի քեզ. Եւ ժողո-
վեսցէ՝՝ զամենայն ազգս ի վերայ Երու-
սաղեմի ի պատերազմ, եւ առցի քա-
ղաքն, եւ յափշտակեսցին տունք, եւ
պղծեսցին կանայք, եւ ելցէ կէս քա-
ղաքին ի գերութիւն. եւ մնացորդք
ժողովրդեան իմոյ մի սատակեսցին ի
3 քաղաքէ անտի։ Եւ ելցէ Տէր եւ տացէ
պատերազմ ընդ ազգսն ընդ այնոսիկ.
իբրեւ յաւուր ճակատու իւրոյ յաւուր
4 պատերազմի. Եւ կացցեն ոտք նորա
յաւուր յայնմիկ ի վերայ լերինն Ձի-
թենեաց՝ հանդէպ Երուսաղեմի յարեւե-
լից. եւ պատառեսցի լեառնն Ձիթե-
նեաց՝ կէսն նորա յարեւելս եւ կէսն նո-
րա [22]ի ծով, վիհ մեծ յոյժ. եւ խոնար-
հեսցի կէս լերինն առ հիւսիսի, եւ կէս
5 նորա առ հարաւ։ Եւ [23]խցցի ձոր լերանց
իմոց, եւ՝՝ կցեսցի ձոր լերանցն մին-

---

[1] Եբր. զԱստուած [2] Եբր. աղօթից (կամ, պաղա-
տանաց) [3] Եբր. միամորոյ [4] Եբր. Ադադ Ռեմնոի
ի դաշտին Մակեդդովայ [5] Եբր. Սեմէեայ [6] Եբր.
աղբեւր [7] Եբր. եւ բնակչաց Երուսաղեմի վասն
մեղաց եւ վասն պղծութեան [8] Եբր. ասէ Տէր
զօրութեանց, բարձից [9] Եբր. խոցեսցեն [10] Եբր.
ի մարգարէանալն

[11] Եբր. ոչ զգեցցին կրկնոցս մազեղէնս ի խաբել
[12] Եբր. ստացաւ [13] Եբր. ասասցեն [14] Եբր. սիրելեաց
իմոց [15] Եբր. իմոյ [16] Եբր. հար [17] Եբր. փոքունցս։
(8) Եւ եղիցի յամենայն երկրի [18] Եբր. զտեցից
զնոսա որպէս զտի [19] Եբր. Աստուած իմ է Տէր
[20] Եբր. գայ օր Տեառն [21] Եբր. ի միջի քում։
(2) Քանզի ժողովեցից [22] Կամ, յարեւմուտս
[23] Եբր. դուք փախիջիք ի ձոր անդր լերանց, զի

չեւ [1]զԱսայէլ. եւ խցցի զոր օրինակ
խցաւ՝՝ յերեսաց շարժմանն՝ յաւուրս
Ոզիայ արքայի Յուդայ. եւ եկեսցէ
հասցէ Տէր Աստուած իմ եւ ամենայն
6 սուրբք ընդ [2]նմա։ Եւ եղիցի յաւուր
յայնմիկ՝ ոչ եղիցի [3]լոյս. եւ ցուրտ եւ
7 պարզ՝ եղիցի օր մի։ Եւ՝՝ օրն այն
յայտնի Տեառն, ոչ տիւ իցէ եւ ոչ գի-
8 շեր, եւ ընդ երեկս եղիցի լոյս։ Յա-
ւուր յայնմիկ բղխեսցէ ջուր կենդանի
[4]յԵրուսաղէմ, կէս նորա ի ծովն [5]ա-
ռաջին, եւ կէս նորա ի ծովն [6]որ յե-
տոյ՝՝. զամառն եւ զգարուն նոյնպէս
9 եղիցի։ Եւ եղիցի Տէր Թագաւոր ի վե-
րայ ամենայն երկրի. յաւուր յայնմիկ
եղիցի Տէր մի, եւ անուն նորա մի,
10 [7]Պատել զամենայն երկիր, զանապատն՝
ի Գաբայ՝՝ մինչեւ ցՌեմոն ընդ կողմն
հարաւոյ Երուսաղեմի. եւ [8]Հռամ ի
տեղւոջ իւրում կացցէ՝՝ ի դրանէն
Բենիամինի մինչեւ ի տեղի դրանն Ա-
ռաջնոյ, մինչեւ ի դուռն Անկեանցն.
եւ [9]մինչեւ ցաշտարակն Անամայելի՝՝
11 մինչեւ ի հնձանս թագաւորին։ Եւ
բնակեսցեն ի նմա, եւ նզովք ոչ եւս
լիցին. եւ բնակեսցէ Երուսաղէմ [10]յուսով։
12 Եւ այս իցեն հարուածք զոր հարցէ
Տէր զազգս ամենայն որ զօրաժողով
եղեն ի վերայ Երուսաղեմի. հալեսցին
մարմինք նոցա՝ մինչդեռ կայցեն ի վե-
րայ ոտից իւրեանց, եւ ծորեսցին աչք
նոցա ի կապճաց իւրեանց, եւ լեզուք
13 նոցա հալեսցին ի բերանս իւրեանց։ Եւ
եղիցի յաւուր յայնմիկ ահ մեծ ի Տեառնէ
ի վերայ նոցա. եւ բուռն հարկանիցեն
իւրաքանչիւր զձեռանէ ընկերի իւրոյ, եւ
[11]խառնեսցէ զձեռն իւր ընդ ձեռն՝՝ ընկերի
14 իւրոյ։ Եւ Յուդա ճակատեսցի յԵրուսա-
ղէմ, եւ ժողովեսցէ զզօրութիւն ամենայն
ազգաց շուրջանակի, ոսկի եւ արծաթ
15 եւ հանդերձ բազում յոյժ։ Եւ այս իցեն
հարուածք ձիոց եւ ջորւոց եւ ուղտուց
եւ իշոց, եւ ամենայն անասնոց որ իցեն
ի բանակսն յայնոսիկ ըստ նմին հարուա-
16 ծոց։ Եւ եղիցի որ միանգամ մնասցեն
յամենայն ազգաց եկելոցն ի վերայ Ե-
րուսաղեմի, ելանիցեն ամ յամէ երկիր
պագանել Թագաւորին Տեառն [12]Աստու-
ծոյ ամենակալի՝՝, եւ առնել զտօն տա-
17 ղաւարահարացն։ Եւ եղիցի որ միան-
գամ ոչ ելանիցէ յամենայն ազգաց երկ-
րի յԵրուսաղէմ, երկիր պագանել Թա-
գաւորին Տեառն [13]Աստուծոյ ամենակալի՝՝.
18 ոչ եղիցի ի վերայ նոցա անձրեւ։ Եւ
եթէ ազգն Եգիպտացւոց ոչ ելանիցէ եւ
գայցէ, [14]եւ ի վերայ նոցա եղիցին՝՝
հարուածքն, զոր հարցէ Տէր զամենայն
ազգսն որ ոչ ելանիցեն առնել զտօն
19 տաղաւարահարացն. Նոյն եղիցի [15]ի մեղս
Եգիպտացւոցն, եւ [15]ի մեղս ամենայն
ազգաց, որ ոչ ելանիցեն առնել զտօն
տաղաւարահարացն։
20 Յաւուր յայնմիկ ի սանձս ձիոցն իցէ
Սրբութիւն Տեառն։ Եւ եղիցին սանք ի
տան Տեառն՝ իբրեւ զտաշտս առաջի սե-
21 ղանոյն։ Եւ եղիցի ամենայն սան որ յԵրու-
սաղէմ եւ որ ի Յուդա՝ նուիրեալ Տեառն
ամենակալի. եւ եկեսցեն ամենեքեան որ
մատուցանիցեն պատարագ՝ առնուցուն
ի նոցանէ եւ եփեսցեն նոքօք. եւ ոչ եւս
եղիցի Քանանացի ի տան Տեառն ամե-
նակալի յաւուր յայնմիկ։

[1]Եբր. ցԱսաղ. և փախիջիք զոր օրինակ փախեաք [2]Եբր. քեզ [3]Եբր. լոյսն պայծառ կամ աղօտ (կամ, լոյս, այլ ցուրտ եւ պարզ)։ (7) Եւ եղիցի [4]Եբր. յԵրուսաղեմէ [5]Այսինքն՝ արեւելից [6]Այսինքն՝ արեւմտից [7]Եբր. Դարձցի ամենայն երկիր ի դաշտ ի Գաբայ [8]Եբր. բարձրասցի եւ [9]Եբր. յաշտարակէն Անանայելի [10]Եբր. յապահովս

[11]Եբր. բարձցի ձեռն նորա ընդդէմ ձեռին [12]Եբր. զօրութեանց [13]Եբր. զօրութեանց՝ [14]Եբր. (որոց չէք անձրեւ), եղիցին [15]Կամ, ի պատուհաս

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ

# ՄԱՂԱՔԵԱՅ

## ԳԼՈՒԽ Ա

1 [1]ԱՌԱԾ բանի Տեառն ի վերայ Իս-
րայէլի ի ձեռն հրեշտակի իւրոյ։
2 Դիք ի սիրտս ձեր. սիրեցի՛՛ զձեզ, ասէ
Տէր. եւ ասացէք՝ Ի՞ւ սիրեցեր զմեզ։
Ո՞չ եղբայր էր Եսաւ Յակոբու, ասէ
3 Տէր, եւ սիրեցի զՅակոբ, Եւ զԵսաւ
ատեցի, եւ [2]կարգեցի զսահմանս նո-
րա յապականութիւն՛՛ եւ զժառան-
գութիւն նորա [3]ի բաշխ անապատի՛՛։
4 Զի թէ ասիցէ Եդովմ, թէ Ահա կոր-
ծանեցաք, դարձցուք եւ շինեսցուք
զքաղաքս աւերեալս. այսպէս ասէ Տէր
[4]ամենակալ. Նոքա շինեսցեն, եւ ես
կործանեցից. եւ կոչեսցին նոքա Սահ-
մանք անօրէնութեան, եւ ժողովուրդ՝
ընդ որում [5]տացէ պատերազմ՛՛ Տէր
5 մինչեւ յյաւիտեան։ Եւ աչք ձեր տես-
ցեն, եւ դուք իսկ ասասջիք՝ եթէ
Բարձրացաւ Տէր [6]ի վերայ սահմանաց՛՛
Իսրայելի։
6 Որդի փառաւոր առնէ զհայր, եւ ծա-
ռայ [7]երկնչի ի տեառնէ իւրմէ՛՛. իսկ
արդ՝ եթէ հայր եմ ես, ո՞ւր է փառքն
իմ. եւ եթէ Տէր եմ, ո՞ւր է [8]պատիւն
իմ, ասէ Տէր ամենակալ, [9]դուք քա-
հանայք՛՛ որ բամբասէք զանուն իմ. եւ
ասէք՝ Ի՞ւ բամբասեցաք զանուն քո։
7 Զի մատուցանէք ի սեղան իմ հաց
պղծութեան, եւ ասացէք, Ի՞ւ պղծե-
ցաք [10]զնոսա. յասելն ձեր թէ Սեղան
Տեառն արհամարհեալ է, [11]եւ զոր ինչ
8 դնին ի վերայ՝ արհամարհէք՛՛։ Զի թէ
մատուցանիցէք զկոյրն ի պատարագ՝
չիցէ՞ չար, եւ եթէ մատուցանիցէք
զկաղն կամ զհիւանդոտն՝ չիցէ՞ չար.
ադէ, մատո զնա իշխանին քում, թէ
ընդունիցի՞ զքեզ, կամ թէ առնուցո՞ւ
9 քեզ սին, ասէ Տէր ամենակալ։ Եւ
այժմ աղաչեցէք զերեսս [12]Աստուծոյ
ձերոյ եւ հաշտեցուցէք զնա՛՛. ի ձեռաց
ձերոց եղեւ այդ. եթէ [13]առի՞ց ինչ ի ձէնջ
անձնառութեամբ, ասէ Տէր ամենակալ։
10 [14]Զի եւ ձեզ դրունք փակեսցեն, եւ մի՛
մերձենայք ի սեղան իմ վայրապար.
զի ոչ են կամք իմ ի ձեզ՛՛, ասէ Տէր
ամենակալ. եւ զպատարագս ոչ ընկա-
11 լայց ի ձեռաց ձերոց։ Զի յարեւելից
մինչեւ ի մուտս արեւու փառաւորեալ
է անուն իմ ի մէջ ազգաց, եւ յամե-
նայն տեղիս մատչին խունկք անուան
իմոյ եւ պատարագ սուրբ. զի մեծ է
անուն իմ ի հեթանոսս, ասէ Տէր ա-
12 մենակալ։ Եւ դուք պղծեցէք զնա՝ յա-
սելն ձեր՝ թէ Սեղան Տեառն պիղծ է,
եւ կերակուրն որ դնի ի վերայ նորա՝
13 արհամարհեալ։ Եւ [15]ասէիք թէ Այն
յաշխատութենէ է. եւ փչեցից զայն
արտաքս, ասէ Տէր ամենակալ. եւ
եթէ մատուցանիցէք ինձ՛՛ զյափշտակ-
եալն եւ զկաղս եւ զվատս պատարագ,
եթէ ընկալա՞յց զնոսա ի ձեռաց ձերոց,
14 ասէ Տէր [11]ամենակալ։ Անիծեալ լիցի

[1]Եբր. Պատգամ բանի Տեառն առ Իսրայէլ ի ձեռն Մաղաքեայ ։(2)Սիրեցի [2]Եբր. եդի զլերինս նորա յամայութիւն [3]Եբր. անապատ վայրի վիշապաց, կամ, ճագարաց [4]Եբր. զօրութեանց, այսպէս եւ այլուր [5]Եբր. զայրացեալ է [6]Կամ անդր քան զսահմանս [7]Եբր. զտէր իւր՝ [8]Եբր. երկիւղն [9]Եբր. ձեզ քահանայիցդ [10]Եբր. զքեզ

[11]Յեբր. [illegible] [12]Եբր. Աստուծոյ, եւ ողորմեսցի մեզ [13]Եբր. առցէ՞ [14]Եբր. Ո՞ ի ձէնջ փակէ իսկ զդրունս դէէ. ոչ իսկ լուցանէք զհուր սեղանոյ իմոյ ձրի. ոչ եմ հաճեալ ընդ ձեզ [15]Եբր. ասէք, Ահա, որպիսի՜ աշխատութիւն, եւ փչէք զնա, ասէ Տէր զօրութեանց. եւ մատուցանէք

[1]մարդն որ կարօղ իցէ, եւ կայցէ ի խա-
շին նորա որձ, եւ ուխտ իւր յանձին
իւրում", եւ մատուցանիցէ Տեառն
զարատաւորն. զի Թագաւոր [2]յաղթօղ
եմ ես, ասէ Տէր ամենակալ, եւ անուն
իմ [3]երեւելի ի մէջ ազգաց։

Գլ. Բ

1 Եւ արդ այս պատուէր է իմ առ ձեզ,
2 քահանայքդ։ Եթէ ոչ լուիցէք եւ ոչ
դնիցէք ի սրտի ձերում, տալ փառս
անուան իմում, ասէ Տէր ամենակալ,
առաքեցից ի վերայ ձեր անէծս, եւ
անիծից զօրհնութիւնս ձեր, եւ նզովե-
ցից զնա, [4]եւ ցրուեցից զօրհնութիւնս
ձեր. եւ մի՛ եղիցի ի միջի ձերում,"
զի դուք ոչ եդիք ի սրտի ձերում։
3 Ահաւասիկ ես [5]որոշեցից ձեզ թեկն",
եւ ցանեցից զապաւառն ընդ երեսս
ձեր, զապաւառն տօնից ձորոց, եւ
4 [6]բարձից զձեզ նովաւ"։ Եւ ծանիջիք
եթէ ես առաքեցի առ ձեզ զպատուէրդ
զայդ՝ լինել ուխտի իմոյ առ Ղեւտա-
5 ցիսն, ասէ Տէր ամենակալ։ Ուխտն իմ
որ ընդ նմա՝ կենաց եւ խաղաղութեան.
ես ետու նմա երկեւղ՝ երկնչել յինէն,
6 եւ յերեսաց անուան իմոյ խորշել։ Օրէնք
ճշմարտութեան էին ի բերան նորա, եւ
անիրաւութիւն ոչ գտաւ ի շրթունս
նորա. խաղաղութեամբ եւ ուղղու-
թեամբ գնաց ընդ իս, եւ զբազումս
7 դարձոյց յանիրաւութենէ։ Զի շրթունք
քահանային զգուշասցին գիտութեան,
եւ օրէնս խնդրեսցեն ի բերանոյ նորա.
զի հրեշտակ Տեառն ամենակալի է։
8 Իսկ դուք խոտորեցարուք ի ճանա-
պարհէ, եւ [7]տկարացուցէք զբազումս
օրինօքն", եւ ապականեցէք զուխտն
9 Ղեւեայ, ասէ Տէր ամենակալ։ Եւ ես
ետու զձեզ արհամարհեալս եւ լքեալս
ընդ ամենայն ազգս, փոխանակ զի ոչ
պահեցէք զճանապարհս իմ. այլ ակն
առնուիք [8]օրինօքն։
10 Ո՞չ ապաքէն մի հայր է ամենեցուն
[9]ձեր. ո՞չ մի Աստուած հաստատեաց
[10]զձեզ. զի՞ է զի թողէք" իւրաքանչիւր
զեղբայր իւր, պղծել զուխտ հարցն
11 [11]ձերոց։ Լքաւ Յուդա," գարշելիք գոր-
ծեցան յԻսրայէլի եւ յԵրուսաղէմ. զի
պղծեաց Յուդա զսրբութիւնս Տեառն
ի ձեռն այնոցիկ" զոր սիրեացն, եւ
12 [12]հարաւ յաստուածս օտարս"։ Սատա-
կեսցէ Տէր զմարդն որ առնիցէ զայն,
[13]մինչեւ նկուն լիցի ի յարկացն Յակո-
բայ, եւ ի մատուցանելեացն պատա-
13 րագաց" Տեառն ամենակալի։ Եւ [14]զոր
ատէի՝ առնէիք. ծածկեցէք արտա-
սուօք զսեղան իմ, եւ լալով եւ քքովք
յաշխատութեանց. Եթէ արժա՞ն իցէ
միւսանգամ հայել ի պատարագս ձեր, եւ
կամ առնուլ ընդունելութիւն" ի ձեռաց
14 ձերոց։ Եւ ասացէք, Բայ ընդէ՞ր. զի Տէր
եղ ուխտ ի մէջ քո, եւ ի մէջ կնոջ ման-
կութեան քո [15]զոր թողեր". եւ նա էր
15 ամուսին եւ կին ուխտի քո։ Եւ [16]ոչ այլ
ոք արար, եւ հատոր ոգւոյ նորա է.
եւ ասացէք՝ թէ Զի՞նչ այլ ինչ խնդրէ
Աստուած՝ եթէ ոչ զաւակ." զգուշա-
ցարուք յոգիս ձեր, եւ [17]զկին մանկու-
16 թեան քո մի՛ թողուր։ Բայց եթէ ատ-
եալ արձակեսցես, ասէ Տէր Աս-
տուած Իսրայէլի, ծածկեսցէ ամպա-
րշտութիւն զխորհուրդս քո", ասէ Տէր
ամենակալ. զգոյշ լերուք յոգիս ձեր,
եւ մի [18]թողուցուք։
17 Որ բարկացուցանէք զԱստուած" բա-
նիւք ձերովք, եւ ասէք՝ Ի՞ւ [19]բարկա-
ցուցաք զնա. յասելն ձեր թէ Ամե-
նայն որ զչար գործէ՝ բարւոք թուի
առաջի Տեառն, եւ ընդ այն իսկ հա-
ճեցաւ նա. [20]եւ Ո՞ւր է Աստուած ար-
դարութեան։

[1]Եբր. այր նենգաւոր յորոյ լեալ ի հօտին ի-
րում որձ, դիցէ ուխտ [2]Եբր. մեծ [3]Եբր.
ահեղ է [4]Յուն. պոխանէ [5]Եբր. սապակա-
նեցից ձեզ զսերմն [6]Եբր. նա տարցի զձեզ
ընդ իւր [7]Եբր. գայթակղեցուցէք զբազումս
յօրէնս [8]Եբր. յօրէնս [9]Եբր. մեր [10]Եբր.
զմեզ. զի՞ է զի խաբէք

[11]Եբր. մերոց։ (11) Նենգեաց Յուդա, եւ [12]Եբր.
այր եղեւ դստեր աստուծոյ օտարի [13]Եբր.
ի յարկացն Յակոբայ, զոր հսկէն և զոր տայն
պատասխանի եւ զոր մատուցանէն պատարագ
[14]Եբր. զայս միւսանգամ արարէք. ծածկեցէք
արտասուօք զսեղան Տեառն, լալով և քքովք,
առ ի չհայելոյ միւսանգամ ի պատարագն,
եւ յառնուլ հաճոյս [15]Եբր. ընդ որում դնա-
ցեր նենգաւ [16]Եբր. Ո՞չ ապաքէն արար մի, եւ
առաւելութիւն ոգւոյ նմա. եւ ընդէ՞ր մի. խնդրէ
զաւակ Աստուծոյ. ապա [17]Եբր. ընդ կնոջ
մանկութեան քո մի՛ դնար նենգաւ։ (16) Զի
ատեամ զարձակելն, ասէ Տէր Աստուած Իս-
րայելի, եւ զոր ծածկէն զգրկանս համդերձիւ-
իւրով [18]Եբր. գնայցէք նենգաւ։
(17) Որ աշխատ առնէք զՏէր [19]Եբր. աշ-
խատ արարաք [20]Եբր. կամ,

Գլ. Գ

1 Ահա ես առաքեմ զհրեշտակ իմ, եւ
[1]տեսցէ զճանապարհս իմ՝՝ առաջի իմ.
եւ յանկարծակի եկեսցէ ի տաճար իւր
Տէր զոր դուքն խնդրէք, [2]եւ հրեշտակն
ուխտի զոր դուք կամիք. ահաւադիկ
2 գայ, ասէ Տէր ամենակալ։ Եւ ո՞վ
ժուժկալեսցէ աւուր մտի նորա, եւ
կամ ո՞ հանդարտեսցէ յայտնութեան
նորա. զի նա մտցէ իբրեւ զբոց հալոցի,
3 եւ իբրեւ զօճառ լուանալեաց։ Եւ
նստցի [3]ձուլել եւ սրբել իբրեւ զարծաթ
եւ իբրեւ զոսկի. եւ սրբեսցէ զորդիս
Ղեւեայ, եւ հալեսցէ՝՝ զնոսա իբրեւ
զոսկի եւ իբրեւ զարծաթ. եւ եղիցին
Տեառն [4]մատուցանել պատարագս ար-
4 դարութեամբ։ Եւ հաճոյ եղիցի Տեառն
պատարագն Յուդայ եւ Երուսաղեմի,
որպէս յաւուրսն յաւիտենից եւ որպէս
5 յամսն առաջինս։ Եւ հասից ի վերայ
ձեր դատաստանաւ. եւ եղէց վկայ ա-
րագ ի վերայ կախարդաց եւ [5]կանանց
շնացելոց, եւ ի վերայ այնոցիկ ոյք
երդնուցուն [6]յանուն իմ՝՝ ստութեամբ,
եւ որ հատանիցեն զվարձս վարձկանի,
եւ որ յաղթահարիցեն զայրիս եւ կափ-
ցեն զորբս, եւ որ խոտորիցեն զիրաւ-
ունս պանդխտին, եւ որ ոչ երկնչի-
6 ցին յինէն, ասէ Տէր ամենակալ։ Զի
ես եմ [7]Տէր Աստուած ձեր, եւ՝՝ ոչ
7 փոխիմ. եւ դուք, որդիք [8]Յակոբու, Ոչ
կացէք ի բաց ի մեղաց՝՝ հարցն ձերոց.
խուսափեցէք յօրինաց իմոց, եւ ոչ պա-
հեցէք զնոսա. դարձարուք առ իս, եւ
ես դառնամ առ ձեզ, ասէ Տէր ամե-
նակալ. եւ ասացէք, Ի՞ւ դարձցուք։
8 [9]Իցէ՞ թէ խաբիցէ՝՝ մարդ զԱստուած.
զի դուք [10]խաբեցէք զիս, եւ ասացէք՝
Ի՞ւ [11]խաբեցաք զքեզ. զի տասանորդք
9 եւ պտուղք առ ձեզ են. Եւ չարակնե-
10 լով չարակնէք՝ եւ խաբէք զիս։ Տարին
կատարեցաւ, եւ զարդիւնս ամենայն ի
շտեմարանս ձեր ժողովեցէք. եւ եղիցի
յափշտակութիւն տանց ձերոց. դարձա-
րուք՝՝ այդուիկ, ասէ Տէր ամենակալ.
եթէ ո՞չ բացից ձեզ զսահանս երկ-
նից, եւ հեղից ձեզ զօրհնութիւն [12]իմ
11 մինչեւ ի շատանալ։ Եւ զգուշացայց
կերակրոց ձերոց, եւ ոչ ապականեցից՝՝
զպտուղ երկրի ձերոյ, եւ մի՛ վատեսցէ
որթ ձեր յայգւոջ, ասէ Տէր ամենակալ։
12 Եւ երանիցեն ձեզ ամենայն ազգք. զի
եղիջիք դուք ինձ երկիր [13]կամաց, ասէ
13 Տէր ամենակալ։ Ծանրացուցէք ինձ
զբանս ձեր, ասէ Տէր. եւ ասացէք՝ Ի՞ւ
14 բամբասեցաք զքեզ։ Զի ասէիք թէ
Զուր է [14]ամենայն որ ծառայէ՝՝ Աստուծոյ.
եւ զի՞նչ աւելի է զի պահեցաք զպահ-
պանութիւնս նորա, եւ զի գնացաք
պաղատանօք առաջի Տեառն ամենա-
15 կալի։ Եւ արդ մեք երանեմք [15]այլոց,
եւ բարեշէն են ամենեքին որ գործեն
զանօրէնութիւն, եւ [16]ընդդէմ դարձան
Աստուծոյ եւ կեցին։
16 Զայս տրտնջեցին՝՝ երկիւղածքն Տեառն
իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում. եւ
անսաց Տէր, եւ լուաւ եւ [17]գրեաց գիր
յիշատակի առաջի երկիւղածաց Տեառն,
17 եւ որոց սարսեն յանուանէ՝՝ նորա։ Եւ
եղիցին ինձ, ասէ Տէր ամենակալ, յա-
ւուր յորում ես արարից [18]փրկութիւն,
եւ փայփայեցից զնոսա՝ որպէս փայ-
փայէ հայր զորդի [19]զպարւոք ծառայ-
18 եալն՝՝ նմա։ Եւ դարձջիք եւ տեսջիք ի
մէջ արդարոյն եւ ի մէջ անօրինին, եւ
ի մէջ ծառայելոյն Աստուծոյ՝ եւ ի մէջ
չծառայելոյն։

Գլ. Դ

1 Զի ահա եկեսցէ օր [20]Տեառն բորբոք-
եալ իբրեւ զհնոց, եւ այրեսցէ զնոսա.
եւ եղիցին ամենայն այլազգիք, եւ

---

[1] Ոմն. պատրաստեսցէ ճանապարհ [2] Իմա՝ այս-ինքն [3] Ոմն. իբրեւ զոր ձուլէն եւ սրբէ զարծաթ, և սրբեսցէ զորդիս Ղեւեայ, եւ զտեսցէ [4] Ոմն. որ մատուցեն [5] Ոմն. ի վերայ [6] Յ Ոմն. [illegible] [7] Ոմն Եհովայ. [8] Ոմն. Յակոբու, ոչ ապստամբեցայք. (7) Յաւուրց անտի [9] Ոմն. Միթէ կողոպտիցէ՞ [10] Ոմն. կողոպտեցէք [11] Ոմն. կողոպտեցաք զքեզ. Տասանորդօք եւ ընծայիւք։ (9) Անիծիւք անիծեալ էք դուք, եւ կողոպտէք զիս, ազգդ համօրէն։ (10) Տարայք զամենայն տասանորդս ի տուն գանձին, եւ եղիցի պաշար ի տան իմում. եւ փորձեցէք զիս [12] Ոմն. մինչեւ չլինելոյ տեղի։ (11) Եւ յանդիմանեցից վասն ձեր զոր ուտէն, եւ ոչ ապականեսցէ [13] Ոմն. հաճոյից [14] Ոմն. ծառայել [15] Ոմն. ամբարտաւանից [16] Ոմն. փորձեցին եւս զԱստուած եւ կեցին։ (16) Յայնժամ խօսեցան [17] Ոմն. գրեցաւ գիր յիշատակի առաջի նորա վասն երկիւղածաց Տեառն, եւ որոց զմտաւ ածեն զանուն [18] Ոմն. գանձ սեպհական [19] Ոմն. որ ծառայէ [20] Ոմն. բորբոքեալ իբրեւ զհնոց, եւ եղիցին ամենայն ամբարտաւանք եւ ամենեքին որ գործեն զա-

ամենեքին որ գործեն զանօրէնութիւն
եղէգն, եւ վառեսցի զնոքօք օրն որ
գալոց է", ասէ Տէր ամենակալ, եւ մի
2 մնասցէ նոցա արմատ եւ մի՛ ոստ: Եւ
ծագեսցէ ձեզ երկիւղածաց անուան
իմոյ արեգակն արդարութեան, եւ բժշ-
կութիւն ի թեւս նորա. եւ ելջիք եւ
խայտասջիք իբրեւ որթք [1]արձակեալք
3 ի կապոյ": Եւ կոխեսջիք զանօրէնս, եւ
եղիցին մոխիր ի ներքոյ ոտից ձերոց
յաւուրն [2]զոր ես արարից, ասէ Տէր
4 ամենակալ": Յիշեցէք զօրէնսն Մովսիսի
ծառայի իմոյ, որպէս պատուիրեցի նմա
ի Քորէբ[3], զամենայն զհրամանս եւ
զիրաւունս:
5 Եւ ահա ես առաքեմ առ ձեզ զԵղիա
[4]Թեզբացի, մինչչեւ եկեալ իցէ օր
6 Տեառն [5]մեծ եւ երեւելի. Որ պատ-
րաստեսցէ զսիրտ հօր առ որդի, եւ
զսիրտ առն առ ընկեր իւր", գուցէ
եկեալ հարկանիցեմ զերկիր [6]միանգա-
մայն:

նօրէնութիւն՝ յարդ. եւ օրն որ գալոց է, այրեսցէ զնոսա [1]Եբր. ի գոմոյ [2]Եբր. յորում ես գործեցից, ասէ Տէր զօրութեանց

[3]Եբրայեցին յառաջ, վասն ամենայն Իսրայէլի [4]Եբր. մարգարէ [5]Եբր. մեծն եւ ահեղ. (6) Եւ նա դարձուսցէ զսիրտ հարց յորդիս, և զսիրտ որդւոց ի հարս նոցա [6]Եբր. նզովիւք

ՎԱԽՃԱՆ ՀՆՈՑ ԿՏԱԿԱՐԱՆԻ

# ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ

## ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ



ՀԱՄԵՄԱՏՈՒԹԵԱՄԲ ՅՈՒՆԱԿԱՆ ԲՆԱԳՐԻՆ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Գ. ՊԱՂՏԱՏԼԵԱՆ

—

1895

# ԳԼՈՒԽՔ ՄԱՏԹԷՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ





# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՏԹԷՈՍԻ

## ԳԼՈՒԽ Ա

1 Գիրք ծննդեան Յիսուսի Քրիստոսի
որդւոյ Դաւթի որդւոյ Աբրահամու։
2 Աբրահամ ծնաւ զԻսահակ. Իսահակ
ծնաւ զՅակոբ. Յակոբ ծնաւ զՅու-
3 դա եւ զեղբարս նորա. Յուդա ծնաւ
զՓարէս եւ զԶարա ի Թամարայ. Փա-
րէս ծնաւ զԵզրոմ. Եզրոմ ծնաւ
4 զԱրամ. Արամ ծնաւ զԱմինադաբ. Ա-
մինադաբ ծնաւ զՆաասոն. Նաասոն
5 ծնաւ զՍաղմոն. Սաղմոն ծնաւ զԲո-
ոս ի Ռաքաբայ. Բոոս ծնաւ զՈվբեդ
6 ի Հռութայ. Ովբէդ ծնաւ զՅեսսէ.
Յեսսէ ծնաւ զԴաւիթ արքայ. [1]Դաւիթ
ծնաւ զՍողոմոն ի կնոջէն Ուրիայ.
7 Սողոմոն ծնաւ զՌոբովամ. Ռոբովամ
ծնաւ զԱբիա. Աբիա ծնաւ [2]զԱսափ.
8 Ասափ" ծնաւ զՅովսափատ. Յովսա-
փատ ծնաւ զՅովրամ. Յովրամ ծնաւ
9 զՈզիա. Ոզիա ծնաւ զՅովաթամ. Յո-
վաթամ ծնաւ զԱքազ. Աքազ ծնաւ
10 զԵզեկիա. Եզեկիա ծնաւ զՄանասէ.
Մանասէ ծնաւ [3]զԱմոն. Ամոն" ծը-
11 նաւ զՅովսիա. Յովսիա ծնաւ զՅեքո-
նիա եւ զեղբարս նորա առ գերու-
12 թեամբն Բաբելացւոց։ Յետ գերու-
թեանն Բաբելացւոց ծնաւ Յեքոնիա
զՍաղաթիէլ. Սաղաթիէլ ծնաւ զԶօ-
13 րաբաբէլ. Զօրաբաբէլ ծնաւ զԱբիուդ.
Աբիուդ ծնաւ զԵղիակիմ. Եղիակիմ
14 ծնաւ զԱզովր. Ազովր ծնաւ զՍադովկ.
Սադովկ ծնաւ զԱքիմ. Աքիմ ծնաւ
15 զԵղիուդ. Եղիուդ ծնաւ զԵղիազար.
Եղիազար ծնաւ զՄատթան. Մատթան
16 ծնաւ զՅակոբ. Յակոբ ծնաւ զՅով-
սէփ զայրն Մարեմայ [4]որում խօսեց-
եալ զՄարիամ կոյս" յորմէ ծնաւ Յի-
17 սուս, որ անուանեալ Քրիստոս։ Արդ
ամենայն ազգք յԱբրահամէ մինչեւ
ի Դաւիթ՝ ազգք չորեքտասանք. եւ
ի Դաւթէ մինչեւ ի գերութիւնն Բա-
բելացւոց՝ ազգք չորեքտասանք. եւ
ի գերութենէն Բաբելացւոց մինչեւ
ի Քրիստոս՝ ազգք չորեքտասանք։
18 Եւ Յիսուսի Քրիստոսի ծնունդն էր
այսպէս. խօսեալ զմայր նորա Մարիամ
Յովսեփու, մինչչեւ եկեալ առ միմեանս՝
19 գտաւ յղացեալ ի Հոգւոյն Սրբոյ։ Եւ
Յովսէփ այր նորա, քանզի արդար էր
եւ ոչ կամէր առակել զնա, խորհեցաւ
20 լռելեայն արձակել զնա։ Եւ մինչդեռ
նա զայս ածէր զմտաւ, ահա հրեշտակ
Տեառն ի տեսլեան երեւեալ նմա եւ
ասէ, Յովսէփ, որդի Դաւթի, մի՛ եր-
կնչիր առնուլ առ քեզ զՄարիամ կին
քո. քանզի որ ի նմայն ծնեալ է՝
21 ի Հոգւոյն Սրբոյ է։ Ծնցի որդի, եւ
կոչեսցես զանուն նորա Յիսուս, զի
նա փրկեսցէ զժողովուրդ իւր ի մեղաց
22 իւրեանց։ Այլ այս ամենայն եղեւ զի
լցցի որ ասացաւն ի Տեառնէ [5]ի ձեռն
23 Եսայեայ մարգարէի". Ահա կոյս յղաս-
ցի եւ ծնցի որդի, եւ կոչեսցեն զա-
նուն նորա Էմմանուէլ, որ թարգմա-
24 նի՝ Ընդ մեզ Աստուած։ Եւ զարթու-
ցեալ Յովսէփ ի քնոյ անտի, արար
որպէս հրամայեաց նմա հրեշտակն
25 Տեառն, եւ առ յինքն զկին իւր։ Եւ
ոչ գիտէր զնա, մինչեւ ծնաւ զորդին
իւր զանդրանիկ, եւ կոչեաց զանուն
նորա Յիսուս։

## ԳԼ. Բ

1 Եւ ի ծնանելն Յիսուսի ի Բեթղեհեմ
Հրէաստանի յաւուրս Հերովդի ար-
քայի, ահա մոգք յարեւելից եկին յԵ-
2 րուսաղէմ, Եւ ասեն, Ո՞ւր է որ ծնաւ
արքայն Հրէից. զի տեսաք զաստղն
նորա յարեւելս, եւ եկաք երկիր պա-
3 գանել նմա։ Եւ իբրեւ լուաւ արքայ
Հերովդէս, խռովեցաւ, եւ ամենայն
4 Երուսաղէմ ընդ նմա։ Եւ ժողովեալ

[1]Ոմանք, Դաւիթ արքայ [2]Ոմանք զԱսա. Ասա
[3]Ոմանք, զԱմոն, Ամոն

[4]Ի Յունին պակաս
[5]Բազումք, ի ձեռն մարգարէին

զամենայն զքահանայապետս եւ զդպիրս
ժողովրդեանն՝ հարցանէր ի նոցանէ
5 թէ ո՞ւր ծնանիցի Քրիստոսն։ Եւ նո-
քա ասեն ցնա, ի Բեթղեհեմ Հրէաս-
տանի. զի այսպէս գրեալ է ի ձեռն
6 մարգարէին. Եւ դու, Բեթղեհեմ, եր-
կիր Յուդայ, ոչինչ կրտսեր ես յիշ-
խանս Յուդայ. ի քէն ելցէ ինձ իշխան,
որ հովուեսցէ զժողովուրդ իմ զԻս-
7 րայէլ։ Յայնժամ Հերովդէս գաղտ կոչ-
եաց զմոգսն, եւ ստուգեաց ի նոցանէ
8 զժամանակ աստեղն երեւելոյ. Եւ ար-
ձակեաց զնոսա ի Բեթղեհեմ, ասէ,
Գնացէք, ստուգեցէք վասն մանկանն,
եւ յորժամ գտանիցէք, ազդ արասջիք
ինձ, զի եւ ես եկեալ երկիր պագից
9 նմա։ Եւ նոքա իբրեւ լուան ի թա-
գաւորէն, գնացին. եւ ահա աստղն
զոր տեսին յարեւելս՝ առաջնորդեաց
նոցա, մինչեւ եկեալ եկաց ի վերայ
10 ուր էր մանուկն։ Իբրեւ տեսին զաստ-
ղն, խնդացին յոյժ ուրախութիւն
11 մեծ։ Եւ իբրեւ մտին ի տունն, տե-
սին զմանուկն հանդերձ Մարեմաւ
մարբն իւրով, եւ անկեալ երկիր պա-
գանէին նմա. եւ բացեալ զգանձս
իւրեանց մատուցին նմա պատարագս՝
12 ոսկի եւ կնդրուկ եւ զմուռս։ Եւ հր-
աման առեալ ի տեսլեան չդառնալ
անդրէն առ Հերովդէս՝ ընդ այլ ճա-
նապարհ գնացին յաշխարհն իւրեանց։
13 Եւ իբրեւ գնացին նոքա անտի,
ահա հրեշտակ Տեառն երեւէր ի տես-
լեան Յովսեփու եւ ասէր, Արի, առ
զմանուկդ եւ զմայր իւր, եւ փախիր
յԵգիպտոս, եւ անդ լինիջիր ցորժամ
ասացից քեզ. քանզի ի խնդիր [1]է Հե-
14 րովդէս կորուսանել զմանուկդ։ Եւ նա
յարուցեալ առ զմանուկն եւ զմայր
իւր գիշերի, եւ գնաց յԵգիպտոս, եւ
անդ էր մինչեւ ցվախճան Հերովդի.
15 Զի լցցի ասացեալն ի Տեառնէ ի ձեռն
մարգարէին որ ասէ, Յեգիպտոսէ [2]կո-
չեցից զորդի իմ։
16 Յայնժամ իբրեւ ետես Հերովդէս թէ
խաբեցաւ ի մոգուց անտի, բարկացաւ
յոյժ. եւ առաքեաց կոտորեաց զամե-
նայն մանկունս որ էին ի Բեթղեհեմ
եւ յամենայն սահմանս նորա յերկե-
մենից եւ ի խոնարհ՝ ըստ ժամանակին
17 զոր ստուգեաց ի մոգուցն։ Յայնժամ
կատարեցաւ ասացեալն ի ձեռն Երե-
18 միայ մարգարէի որ ասէ, Ձայն գուժ-
եաց ի Հռամա, ողբումն եւ լալումն
եւ աշխարումն յոյժ. Հռաքէլ լայր
զորդիս իւր, եւ ոչ կամէր մխիթարել,
19 զի ոչ էին։ Եւ ի վախճանելն Հերով-
դի՝ ահա հրեշտակ Տեառն ի տեսլեան
20 երեւէր Յովսեփայ յԵգիպտոս, Եւ ա-
սէր, Արի, առ զմանուկդ եւ զմայր
իւր, եւ գնա յերկիրն Իսրայելի, զի
մեռան որ խնդրէին զանձն մանկանդ։
21 Եւ նա յարուցեալ առ զմանուկն եւ
զմայր նորա, եւ եկն յերկիրն Իս-
22 րայելի։ Եւ իբրեւ լուաւ եթէ Արքե-
ղայոս թագաւորեաց Հրէաստանի փո-
խանակ Հերովդի հօր իւրոյ, երկեաւ
երթալ անդր. եւ հրաման առեալ ի
տեսլեան՝ գնաց ի կողմանս Գալիլեաց-
23 ւոց։ Եւ եկեալ բնակեցաւ ի քաղաքին
որ կոչէր Նազարէթ, զի լցցի բան
մարգարէիցն թէ Նազովրեցի կոչեսցի։

ԳԼ. Գ

1 Յաւուրսն յայնոսիկ գայ Յովհաննէս
մկրտիչ քարոզել յանապատին Հրէաս-
2 տանի, Եւ ասել, Ապաշխարեցէք, զի
3 մերձեալ է արքայութիւն երկնից. Զի
սա է վասն որոյ ասացաւ ի ձեռն Ե-
սայեայ մարգարէի, որ ասէ, Ձայն
բարբառոյ յանապատի. Պատրաստ ա-
րարէք զճանապարհ Տեառն, եւ ուղիղ
4 արարէք զշաւիղս նորա։ Եւ ինքն Յով-
հաննէս ունէր հանդերձ ի ստեւոյ ուղ-
տու, եւ գօտի մաշկեղէն ընդ մէջ իւր,
եւ կերակուր նորա էր մարախ եւ
5 մեղր վայրենի։ Յայնժամ ելանէին առ
նա ամենայն Երուսաղեմացիք եւ ամե-
նայն Հրէաստան եւ ամենայն կողմն
6 Յորդանանու, Եւ մկրտէին ի նմանէ
ի Յորդանան [3]գետ, եւ խոստովան լի-
7 նէին զմեղս իւրեանց։ Եւ տեսեալ
զբազումս ի սադուկեցւոց եւ ի փա-
րիսեցւոց եկեալս ի մկրտութիւն նո-
րա, ասէ ցնոսա, Ծնունդք իժից, ո՞
ցոյց ձեզ փախչել ի բարկութենէն որ
8 գալոցն է։ Արարէք այսուհետեւ պտ-
9 ուղ արժանի ապաշխարութեան. Եւ
մի՛ համարիցիք ասել յանձինս թէ

[1] Յոյնն, լինելոց է

[2] Յոյնն, կոչեցի

[3] Յոմանս գետով

Ունիմք մեք հայր զԱբրահամ. ասեմ
ձեզ, զի կարող է Աստուած ի քա-
րանցս յայսցանէ յարուցանել որդիս
10 Աբրահամու: Զի ահաւասիկ տապար առ
արմին ծառոց գնի. ամենայն ծառ որ
ոչ առնիցէ զպտուղ բարի՝ հատանի եւ
11 ի հուր արկանի: Ես մկրտեմ զձեզ
ջրով յապաշխարութիւն, բայց որ զկնի
իմ գայ՝ հզօրագոյն է քան զիս, եւ ես
չեմ բաւական բառնալ զկօշիկս նորա.
նա մկրտեսցէ զձեզ ի Հոգին Սուրբ
12 եւ ի հուր. Որոյ հեծանոցն ի ձեռին
իւրում, եւ սրբեսցէ զկալ իւր, եւ
ժողովեսցէ զցորեանն ի շտեմարանս
իւր, եւ զյարդն այրեսցէ անշէջ հրով:
13 Յայնժամ գայ Յիսուս ի Գալիլեէ
ի Յորդանան առ Յովհաննէս մկրտել
14 ի նմանէ: Եւ Յովհաննէս արգելու զնա
եւ ասէ, Ինձ պիտոյ է ի քէն մկրտել,
15 եւ դու առ իս գաս: Պատասխանի ետ
Յիսուս եւ ասէ ցնա, Թոյլ տուր այժմ,
զի այսպէս վայել է մեզ լնուլ զամե-
նայն արդարութիւն. եւ ապա թոյլ
16 ետ նմա: Եւ իբրեւ մկրտեցաւ Յի-
սուս, ել վաղվաղակի ի ջրոյ անտի,
եւ ահա բացան նմա երկինք, եւ ե-
տես զՀոգին Աստուծոյ զի իջանէր
իբրեւ զաղաւնի եւ գայր ի վերայ նո-
17 րա: Եւ ահա ձայն յերկնից որ ասէր,
Դա է Որդի իմ սիրելի ընդ որ հաճե-
ցայ:

## Գլ. Դ

1 Յայնժամ վարեցաւ Յիսուս յանապատ
2 ի Հոգւոյն՝ փորձել ի Սատանայէ. Եւ
պահեալ զքառասուն տիւ եւ զքառա-
սուն գիշեր՝ ապա քաղցեաւ:
3 Եւ մատուցեալ փորձիչն ասէ ցնա,
Եթէ Որդի ես Աստուծոյ, ասա զի
4 քարինքս այսոքիկ հաց լինիցին: Նա
պատասխանի ետ եւ ասէ, Գրեալ է
թէ Ոչ հացիւ միայն կեցցէ մարդ, այլ
ամենայն բանիւ որ ելանէ ի բերանոյ
Աստուծոյ:
5 Յայնժամ առեալ ածէ զնա Սատա-
նայ ի քաղաքն սուրբ, եւ կացուցանէ
զնա ի վերայ աշտարակի տաճարին,
6 Եւ ասէ ցնա, Եթէ Որդի ես Աստու-
ծոյ, արկ զքեզ աստի ի վայր, զի
գրեալ է թէ Հրեշտակաց իւրոց պատ-
ուիրեալ է վասն քո, եւ ի վերայ ձե-
ռաց բարձցեն զքեզ, զի մի՛ երբեք
7 հարցես զքարի զոտն քո: Ասէ ցնա
[1]դարձեալ Յիսուս, Դրեալ՞ է թէ Ոչ
փորձեսցես զՏէր Աստուած քո:
8 Դարձեալ առնու ածէ զնա Սատա-
նայ ի լեառն մի բարձր յոյժ, եւ ցու-
ցանէ նմա զամենայն թագաւորու-
9 թիւնս աշխարհի եւ զփառս նոցա, Եւ
ասէ ցնա, Զայս ամենայն քեզ տաց,
եթէ անկեալ երկիր պագանիցես ինձ:
10 Յայնժամ ասէ ցնա Յիսուս, Երթ յետս
իմ, Սատանայ, զի գրեալ է, Տեառն
Աստուծոյ քում երկիր պագցես եւ զնա
11 միայն պաշտեսցես: Ապա եթող զնա
Սատանայ, եւ ահա հրեշտակք մատ-
եան եւ պաշտէին զնա:
12 ԲԲ. Եւ իբրեւ լուաւ Յիսուս եթէ
Յովհաննէս մատնեցաւ, մեկնեցաւ
13 գնաց ի Գալիլեա. Եւ թողեալ զՆա-
զարէթ՝ եկն բնակեցաւ ի Կափառնա-
յում ի ծովեզերին, ի սահմանս Զա-
14 բուղոնի եւ Նեփթաղիմայ. Զի լցցի
բանն որ ասացաւ ի ձեռն Եսայեայ
15 մարգարէի. Երկիր Զաբուղոնի եւ
երկիր Նեփթաղիմայ, ճանապարհ ծո-
վու յայնկոյս Յորդանանու, Գալիլեա
16 հեթանոսաց. Ժողովուրդ որ նստէր
ի խաւարի՝ ետես լոյս մեծ. եւ որոց
նստէին յաշխարհին եւ ի ստուերս մա-
17 հու՝ լոյս ծագեաց նոցա: Յայնմ հետէ
սկսաւ քարոզել Յիսուս եւ ասել, Ա-
պաշխարեցէք, զի մերձեալ է արքա-
յութիւն երկնից:
18 Մինչդեռ գնայր Յիսուս ընդ եզր
ծովուն Գալիլեացւոց, ետես երկուս
եղբարս, զՍիմովն զկոչեցեալն Պետրոս
եւ զԱնդրէաս եղբայր նորա, արկեալ
ուռկան ի ծով, քանզի ձկնորսք էին:
19 Եւ ասէ ցնոսա, Եկայք զկնի իմ, եւ
20 արարից զձեզ որսորդս մարդկան: Եւ
նոցա թողեալ վաղվաղակի զգործին՝
21 գնացին զհետ նորա: Եւ մատուցեալ
անտի յառաջ՝ ետես այլ երկուս եղ-
բարս, զՅակովբոս Զեբեդեայ եւ զՅով-
հաննէս զեղբայր նորա, ի նաւի Զե-
բեդեաւ հանդերձ հարբն իւրեանց,
մինչ կարկատէին զուռկանս իւրեանց,
22 եւ կոչեաց զնոսա: Նոցա թողեալ
վաղվաղակի զնաւն եւ զհայր իւրեանց,
գնացին զհետ նորա:
23 Եւ շրջէր Յիսուս ընդ ամենայն կողմն

---

[1]Ուղղ., Յիսուս, Դարձեալ գրեալ

*Գալիլեացւոց, ուսուցանէր ի ժողո-
վուրդս նոցա եւ քարոզէր զաւետա-
րանն արքայութեան, եւ բժշկէր զա-
մենայն հիւանդութիւնս եւ զամենայն
24 ախտս ի ժողովրդեանն։ Եւ ել լուր
նորա ընդ ամենայն երկիրն Ասորւոց,
եւ մատուցին առ նա զամենայն հի-
ւանդս որ նեղեալ էին ի պէսպէս ցաւս
եւ ի տանջանս, եւ զդիւահարս եւ
զլուսնոտս եւ զանդամալոյծս, եւ բ-
25 ժշկեաց զնոսա։ Եւ երթային զհետ
նորա ժողովուրդք բազումք ի Գալիլեէ
եւ ի Դեկապոլեայ եւ յԵրուսաղեմէ
եւ ի Հրէաստանէ եւ յայնկոյս Յոր-
դանանու [1]եւ բժշկեաց զնոսա"։*

## Գլ. Ե

1 ԲԳ. Եւ տեսեալ զժողովուրդսն՝ ել
ի լեառն. եւ իբրեւ նստաւ անդ, մատ-
2 եան առ նա աշակերտք նորա. Եւ
բացեալ զբերան իւր ուսուցանէր զնո-
սա եւ ասէր,
3 Երանի աղքատաց հոգւով, զի նոցա
4 է արքայութիւն երկնից։ Երանի սը-
գաւորաց, զի նոքա մխիթարեսցին։
5 Երանի հեզոց, զի նոքա ժառանգես-
6 ցեն զերկիր։ Երանի որ քաղցեալ եւ
ծարաւի իցեն արդարութեան, զի նո-
7 քա յագեսցին։ Երանի ողորմածաց,
8 զի նոքա ողորմութիւն գտցեն։ Երա-
նի այնոցիկ որ սուրբ են սրտիւք, զի
9 նոքա զԱստուած տեսցեն։ Երանի
խաղաղարարաց, զի նոքա որդիք Աս-
10 տուծոյ կոչեսցին։ Երանի որ հալա-
ծեալ իցեն վասն արդարութեան, զի
11 նոցա է արքայութիւն երկնից։ Երանի
է ձեզ յորժամ նախատիցեն զձեզ եւ
հալածեսցեն, եւ ասիցեն զամենայն
12 բան չար զձէնջ սուտ վասն իմ. Ցնծա-
ցէք եւ ուրախ լերուք, զի վարձք ձեր
բազում են յերկինս. զի այսպէս հա-
լածեցին զմարգարէսն որ յառաջ քան
զձեզ էին։
13 Դուք էք աղ երկրի. ապա թէ աղն
անհամի, ի՞ւ յաղիցի. ոչ իմիք ազդիցէ
այնուհետեւ, բայց եթէ ընկենուլ ար-
տաքս եւ կոխան լինել ի մարդկանէ։
14 Դուք էք լոյս աշխարհի. ոչ կարէ քա-
ղաք թաքչել որ ի վերայ լերին կայցէ։
15 Եւ ոչ լուցանեն ճրագ եւ դնեն ընդ
գրուանաւ, այլ ի վերայ աշտանակի,
եւ լոյս տայ ամենեցուն որ ի տանն
16 իցեն։ Այնպէս լուսաւորեսցէ լոյս ձեր
առաջի մարդկան, որպէս զի տեսցեն
զգործս ձեր բարիս, եւ փառաւորես-
ցեն զՀայր ձեր որ յերկինս է։
17 ԲԴ. Մի՛ համարիք եթէ եկի լու-
ծանել զօրէնս կամ զմարգարէս. ոչ
18 եկի լուծանել, այլ՝ լնուլ։ Ամէն ասեմ
ձեզ, Մինչեւ անցցեն երկինք եւ եր-
կիր, յովտ մի [2]որ նշանախեց մի է" ոչ
անցցէ յօրինացն եւ ի մարգարէից մին-
19 չեւ ամենայն եղիցի։ Որ ոք լուծցէ
մի ինչ ի պատուիրանացս յայսցանէ
ի փոքունց եւ ուսուսցէ այնպէս զմար-
դիկ՝ փոքր կոչեսցի յարքայութեան
երկնից. իսկ որ արասցէ եւ ուսուսցէ՝
նա մեծ կոչեսցի յարքայութեան երկ-
20 նից։ Բայց ասեմ ձեզ, զի Եթէ ոչ ա-
ռաւելուցու արդարութիւն ձեր աւելի
քան զդպրացն եւ զփարիսեցւոց, ոչ
մտանիցէք յարքայութիւն երկնից։
21 Լուարուք զի ասացաւ առաջնոցն
թէ Մի՛ սպանանիր. զի որ սպանա-
նիցէ՝ պարտական լիցի դատաստանի։
22 Այլ ես ասեմ ձեզ եթէ, Ամենայն որ
բարկանայ եղբօր իւրում տարապար-
տուց՝ պարտաւոր լիցի դատաստանի.
եւ որ ասիցէ ցեղբայր իւր Յիմար՝
պարտաւոր լիցի ատենի. եւ որ ասի-
ցէ ցեղբայր իւր Մորոս՝ պարտաւոր
23 լիցի ի գեհենն հրոյն։ Եթէ մատուցա-
նիցես զպատարագ քո ի վերայ սեղա-
նոյ, եւ անդ յիշեսցես եթէ եղբայր քո
24 ունիցի ինչ խէթ զքէն, Թող զպատա-
րագն քո առաջի սեղանոյն, եւ երթ
նախ հաշտեաց ընդ եղբօր քում, եւ
ապա եկեալ մատուսջիր զպատարագն
25 քո։ Լեր իրաւախոհ ընդ ոսոխի քում
վաղվաղակի, մինչ դեռ իցես ընդ նմա
ի ճանապարհի. գուցէ մատնիցէ զքեզ
ոսոխն դատաւորի. եւ դատաւորն՝
26 դահճի, եւ արկանիցիս ի բանտ։ Ամէն
ասեմ քեզ, ոչ ելանիցես անտի մինչեւ
հատուցանիցես զյետին նաքարակիտն։
27 Լուարուք զի ասացաւ, Մի՛ շնար։
28 Բայց ես ասեմ ձեզ թէ, Ամենայն որ
հայի ի կին մարդ առ ի ցանկանալոյ
նմա՝ անդէն շնացաւ ընդ նմա ի սրտի

---

[1] ի Յունին պակասի

[2] Յոյնն, կամ Նշանախեց մի

29 *իւրում։ Եթէ ակն քո աջ գայթակղե-*
*ցուցանէ զքեզ, խլեա զնա եւ ընկեա*
*ի քէն. զի լաւ է քեզ եթէ մի յան-*
*դամոց քոց կորիցէ, եւ մի՛ ամենայն*
30 *մարմինդ քո անկանիցի ի գեհեն։ Եւ*
*եթէ աջ ձեռն քո գայթակղեցուցանէ*
*զքեզ, հատ զնա եւ ընկեա ի քէն. զի*
*լաւ է քեզ եթէ մի յանդամոց քոց կո-*
*րիցէ, եւ մի՛ ամենայն մարմինդ քո*
31 *արկանիցի ի գեհեն։ Ապաքէն ասացաւ*
*եթէ, Որ արձակիցէ զկին իւր՝ տացէ*
32 *նմա զարձակմանն. Բայց ես ասեմ*
*ձեզ եթէ, Ամենայն որ արձակէ զկին*
*իւր առանց բանի պոռնկութեան՝ նա*
*տայ նմա շնալ, եւ որ զարձակեալն*
*առնէ՝ շնայ։*
33 *Դարձեալ լուարուք զի ասացաւ ա-*
*ռաջնոցն, Մի՛ երդնուցուս սուտ, բայց*
34 *հատուսցես Տեառն զերդմունս քո։ Այլ*
*ես ասեմ ձեզ, Ամենեւին մի՛ երդնուլ,*
*մի՛ յերկինս՝ զի աթոռ է Աստուծոյ,*
35 *Եւ մի՛ յերկիր՝ զի պատուանդան է*
*ոտից նորա, եւ մի՛ յԵրուսաղէմ՝ զի*
36 *քաղաք է մեծի Արքայի. Եւ մի՛ ի գլուխ*
*քո երդնուցուս, զի ոչ կարես մազ մի*
37 *սպիտակ առնել կամ թուխ։ Այլ եղիցի*
*ձեր բան՝ Այոն այո, եւ, Ոչն ոչ. զի*
*աւելին քան զայն ի չարէն է։*
38 *Լուարուք զի ասացաւ, Ակն ընդ*
39 *ական եւ ատամն ընդ ատաման։ Այլ*
*ես ասեմ ձեզ, Մի՛ կալ հակառակ չա-*
*րին. այլ եթէ ոք ածիցէ ապտակ յաջ*
40 *ծնօտ քո, դարձո նմա եւ զմիւսն։ Եւ*
*որ կամիցի ոք դատել եւ առնուլ զշա-*
*պիկս քո՝ թող ի նմա եւ զբաճկոն քո։*
41 *Եւ որ տարապարհակ վարիցէ զքեզ*
*մղոն մի՝ երթ ընդ նմա եւ երկուս։*
42 *Որում խնդրէ ի քէն՝ տուր. եւ որ*
*կամի փոխ առնուլ ի քէն՝ մի՛ դար-*
*ձուցանէր զերեսս։*
43 *Լուարուք ապաքէն զի ասացաւ,*
*Սիրեսցես զընկեր քո, եւ ատեսցես*
44 *զթշնամին քո։ Այլ ես ասեմ ձեզ, Սի-*
*րեցէք զթշնամիս ձեր, օրհնեցէք զա-*
*նիծիչս ձեր, բարի արարէք ատելեաց*
*ձերոց, եւ աղօթս արարէք ի վերայ*
*այնոցիկ որ լլկեն զձեզ եւ հալածեն.*
45 *Զի եղիջիք որդիք Հօր ձերոյ որ յեր-*
*կինսն է. զի զարեգակն իւր ծագէ ի*
*վերայ չարաց եւ բարեաց, եւ ածէ*
*անձրեւ ի վերայ արդարոց եւ մեղա-*
46 *ւորաց։ Զի եթէ սիրիցէք զայնոսիկ*
*որ սիրեն զձեզ՝ զի՞նչ վարձք իցեն.*
*ո՞չ ապաքէն եւ մաքսաւորք զնոյն*
47 *գործեն։ Եւ եթէ տայցէք միայն ող-*
*ջոյն [1]բարեկամաց ձերոց, զի՞նչ աւելի*
*առնէք. ո՞չ ապաքէն [2]մաքսաւորք [3]եւ*
48 *մեղաւորք՝ զնոյն գործեն։ Արդ եղե-*
*րուք դուք կատարեալք, որպէս եւ*
*Հայրն ձեր երկնաւոր կատարեալ է։*

## ԳԼ. Զ

1 ԲԵ. *Զգոյշ լերուք ողորմութեան*
*ձերում մի՛ առնել առաջի մարդկան,*
*որպէս թէ ի ցոյց ինչ նոցա, գուցէ*
*եւ վարձս ոչ ընդունիցիք ի Հօրէն*
2 *ձերմէ որ յերկինսն է։ Այլ յորժամ*
*առնիցես ողորմութիւն, մի՛ հարկա-*
*նէր փող առաջի քո, որպէս կեղծա-*
*ւորքն առնեն ի ժողովուրդս եւ ի հրա-*
*պարակս, որպէս զի փառաւորեսցին*
*ի մարդկանէ. ամէն ասեմ ձեզ, Այն*
3 *իսկ են վարձք նոցա։ Այլ դու յորժամ*
*ողորմութիւն առնիցես, մի՛ գիտասցէ*
4 *ձախ քո զինչ գործէ աջ քո. Որպէս*
*զի եղիցի ողորմութիւն քո ի ծածուկ,*
*եւ Հայրն քո որ տեսանէ ի ծածուկ՝*
*հատուսցէ քեզ յայտնապէս։*
5 *Եւ յորժամ յաղօթս կայցես, մի՛ լի-*
*նիցիս որպէս կեղծաւորքն, զի սիրեն*
*ի ժողովուրդս եւ յանկիւնս հրապա-*
*րակաց կալ յաղօթս, որպէս զի երե-*
*ւեսցին մարդկան. ամէն ասեմ ձեզ,*
6 *Այն իսկ են վարձք նոցա։ Այլ դու*
*յորժամ կայցես յաղօթս, մուտ ի սեն-*
*եակ քո, եւ փակեա զդուրս քո, եւ*
*կաց յաղօթս առ Հայր քո ի ծածուկ,*
*եւ Հայրն քո որ տեսանէ ի ծածուկ՝*
7 *հատուսցէ քեզ յայտնապէս։ Եւ յորժամ*
*կայցէք յաղօթս, մի՛ շատախօս լինիք*
*իբրեւ զհեթանոսսն. զի համարին եթէ*
*ի բազում խօսից իւրեանց լսելի լինի-*
8 *ցին։ Արդ մի՛ նմանիցէք նոցա. զի*
*գիտէ Հայրն ձեր զինչ պիտոյ է ձեզ,*
*մինչչեւ ձեր խնդրեալ ինչ իցէ ի նմա-*
9 *նէ։ Եւ արդ այսպէս կացէք դուք յա-*
*ղօթս.*
*Հայր մեր որ յերկինս, սուրբ եղիցի*
10 *անուն քո. Եկեսցէ արքայութիւն քո.*
*Եղիցին կամք քո որպէս յերկինս՝ եւ*

---

[1]Յունար., եղբարց
[2]Ոմանք, հեթանոսք
[3]ի Յունին պակասէ

11 յերկրի․ Զհաց մեր հանապազորդ տուր
12 մեզ այսօր․ Եւ թող մեզ զպարտիս
մեր, որպէս եւ մեք թողումք մերոց
13 պարտապանաց․ Եւ մի՛ տանիր զմեզ
ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ ի չա-
րէն․ զի քո է արքայութիւն եւ զօ-
րութիւն եւ փառք յաւիտեանս․ ամէն։
14 Զի եթէ թողուցուք մարդկան զյան-
ցանս նոցա, թողցէ եւ ձեզ Հայրն
15 ձեր երկնաւոր․ Ապա թէ ոչ թողու-
ցուք մարդկան զյանցանս նոցա, եւ
ոչ Հայրն ձեր թողցէ ձեզ զյանցանս
ձեր։
16 Եւ յորժամ պահիցէք, մի՛ լինիք
իբրեւ զկեղծաւորսն տրտմեալք, որ
ապականեն զերեսս իւրեանց, որպէս
զի երեւեսցին մարդկան թէ պահեն․
ամէն ասեմ ձեզ, Այն իսկ են վարձք
17 նոցա։ Այլ դու յորժամ պահիցես, օծ
18 զգլուխ քո եւ լուա զերեսս քո, Զի
մի՛ երեւեսցիս մարդկան իբրեւ զպա-
հօղ, այլ՝ Հօրն քում ի ծածուկ․ եւ
Հայրն քո որ տեսանէ ի ծածուկ՝ հա-
տուսցէ [1]քեզ։
19 Մի՛ գանձէք ձեզ գանձս յերկրի,
ուր ցեց եւ ուտիճ ապականեն, եւ
ուր գողք ական հատանեն եւ գողա-
20 նան։ Այլ գանձեցէք ձեզ գանձս յեր-
կինս, ուր ոչ ցեց եւ ոչ ուտիճ ապա-
կանեն, եւ ոչ գողք ական հատանեն
21 եւ գողանան․ Զի ուր գանձք ձեր են՝
անդ եւ սիրտք ձեր եղիցին։
22 ԲՋ․ Ճրագ մարմնոյ ակն է․ եթէ
ակն քո առատ է, ամենայն մարմինդ
23 լուսաւոր եղիցի։ Ապա եթէ ակն քո
չար է, ամենայն մարմինդ խաւարին
եղիցի․ իսկ արդ եթէ լոյսդ որ ի քեզ
է՝ խաւար է, խաւարն ո՞րչափ եւս։
24 Ոչ ոք կարէ երկուց տերանց ծառա-
յել․ կա՛մ զմին ատիցէ եւ զմիւսն սի-
րիցէ, կա՛մ զմին մեծարիցէ եւ զմիւսն
արհամարհիցէ․ ոչ կարէք Աստուծոյ
25 ծառայել եւ մամոնայի։ Վասն այսորիկ
ասեմ ձեզ, Մի՛ հոգայք վասն ոգւոց
ձերոց՝ զինչ ուտիցէք կամ զինչ ըմ-
պիցէք․ եւ մի՛՝ վասն մարմնոց ձերոց՝
թէ զինչ արկանիցիք․ ո՞չ ապաքէն ոգի
առաւել է քան զկերակուր, եւ մար-
26 մին՝ քան զհանդերձ։ Հայեցարուք ի
թռչունս երկնից, զի ոչ վարեն եւ ոչ
հնձեն եւ ոչ ժողովեն ի շտեմարանս,
եւ Հայրն ձեր երկնաւոր կերակրէ
զնոսա․ ո՞չ ապաքէն դուք առաւել էք
27 քան զնոսա։ Իսկ արդ ո՞ ի ձէնջ առ
հոգալ իւրում յաւելուլ կարիցէ ի հա-
28 սակ իւր կանգուն մի։ Եւ վասն հան-
դերձի զի՞ հոգայք․ հայեցարուք ի շու-
շանն վայրենի, ո՛րպէս աճէ․ ոչ ջանայ
29 եւ ոչ նիւթէ։ Ասեմ ձեզ, զի եւ ոչ
Սողոմոն յամենայն ի փառսն իւրում
30 զգեցաւ իբրեւ զմի ի նոցանէ․ Իսկ
եթէ զխոտն ի վայրի որ այսօր է եւ
վաղիւ ի հնոց արկանի, Աստուած այն-
պէս զգեցուցանէ, ո՞րչափ եւս առաւել
31 զձեզ, թերահաւատք։ Մի՛ այսուհե-
տեւ հոգայցէք եւ ասիցէք, Զի՞նչ կե-
րիցուք կամ զի՞նչ արբցուք կամ զի՞նչ
32 զգեցցուք․ Զի զայդ ամենայն հեթա-
նոսք խնդրեն․ քանզի գիտէ Հայրն
ձեր երկնաւոր թէ պիտոյ է ձեզ այդ
33 ամենայն։ Խնդրեցէք նախ զարքայու-
թիւնն Աստուծոյ եւ զարդարութիւն
նորա, եւ այդ ամենայն յաւելցի ձեզ։
34 Մի՛ այսուհետեւ հոգայցէք վասն վաղ-
ուի, զի վաղիւն վասն իւր հոգասցի․
շատ է աւուրն չար իւր։

## Գլ․ Է

1 ԲԷ․ Մի՛ դատիք, զի մի՛ դատի-
2 ցիք․ Զի որով դատաստանաւ դատիք՝
դատելոց էք․ եւ որով չափով չափէք՝
3 չափեսցի ձեզ։ Զի՞ տեսանես զշիւղ
յական եղբօր քո, եւ ի քում ական
4 զգերանդ ոչ տեսանես։ Կամ զիա՞րդ
ասես ցեղբայր քո, Թող հանից զշիւղ
յականէ քումմէ․ եւ ահաւասիկ ի
5 քում ական գերան կայ։ Կեղծաւոր,
հան նախ զգերանդ յականէ քումմէ,
եւ ապա հայեսցիս հանել զշիւղն յա-
կանէ եղբօր քո։
6 Մի՛ տայք զսրբութիւն շանց, եւ
մի՛ արկանէք զմարգարիտս ձեր առա-
ջի խոզաց, զի մի՛ առ ոտն կոխիցեն
զնոսա, եւ դարձեալ երկիծուցանիցեն
զձեզ։
7 Խնդրեցէք, եւ տացի ձեզ․ հայցե-
ցէք, եւ գտջիք․ բախեցէք, եւ բացցի
8 ձեզ․ Զի ամենայն որ խնդրէ՝ առնու,
եւ որ հայցէ՝ գտանէ, եւ որ բախէ՝
9 բացցի նմա։ Ո՞ իցէ ի ձէնջ մարդ զոր
խնդրիցէ որդի իւր հաց, միթէ քա՞ր

[1] Ոմն․, քեզ յայտնապէս

10 տայցէ նմա. Եւ կամ խնդրիցէ ձուկն,
11 միթէ օձ տայցէ նմա։ Արդ եթէ դուք
որ չարքդ էք՝ գիտէք պարգեւս բարիս
տալ որդւոց ձերոց, ո՞րչափ եւս ա-
ռաւել Հայրն ձեր որ յերկինս է՝ տա-
ցէ բարիս այնոցիկ որ խնդրեն զնա։
12 Զամենայն զոր միանգամ կամիցիք
թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս
եւ դուք արարէք նոցա, զի այս իսկ
են օրէնքն եւ մարգարէք։
13 Մտէք ընդ նեղ դուռն, [1]քանի՛ ըն-
դարձակ է դուռնն եւ համարձակ ճա-
նապարհն որ տանի ի կորուստ, եւ
բազումք են որ մտանեն ընդ նա։
14 [1]Քանի՛ անձուկ է դուռնն եւ նեղ ճա-
նապարհն որ տանի ի կեանս, եւ սա-
կաւք են որ գտանեն զնա։
15 Զգոյշ լերուք ի սուտ մարգարէիցն
որ գան առ ձեզ հանդերձիւք ոչխա-
րաց, եւ ի ներքոյ են գայլք յափշտա-
16 կողք։ Ի պտղոյ նոցա ծանիջիք զնոսա.
միթէ քաղիցե՞ն ի փշոց խաղող, կամ
17 ի տատասկէ թուզ. Այսպէս ամենայն
ծառ բարի՝ պտուղ բարի առնէ, եւ
18 ծառ չար՝ պտուղ չար առնէ։ Ոչ կարէ
ծառ բարի պտուղ չար առնել, եւ ոչ
19 ծառ չար պտուղ բարի առնել։ Ամե-
նայն ծառ որ ոչ առնէ պտուղ բարի՝
20 հատանի եւ ի հուր արկանի։ Ապա ի
պտղոյ նոցա ծանիջիք զնոսա։
21 Ոչ ամենայն որ ասէ ցիս, Տէր, Տէր,
մտցէ յարքայութիւն երկնից, այլ՝ որ
առնէ զկամս Հօր իմոյ որ յերկինսն է։
22 Բազումք ասիցեն ցիս յաւուրն յայն-
միկ, Տէր, Տէր, ո՞չ յանուն քո մար-
գարէացաք, եւ յանուն քո դեւս հա-
նաք, եւ յանուն քո զօրութիւնս բա-
23 զումս արարաք։ Եւ յայնժամ ասացից
ցնոսա եթէ, Ոչ երբեք գիտէի զձեզ.
ի բաց կացէք յինէն [2]ամենեքեան՝ որք
գործէիք զանօրէնութիւն։
24 Ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ
եւ առնէ զսոսա՝ նմանեսցէ առն ի-
մաստնոյ որ շինեաց զտուն իւր ի վե-
25 րայ վիմի. Իջին անձրեւք եւ խաղացին
գետք, շնչեցին հողմք եւ բախեցին
զտունն, եւ ոչ կործանեցաւ, քանզի
26 ի վերայ վիմի հաստատեալ էր։ Եւ ա-
մենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ
եւ ոչ առնէ զսոսա՝ նմանեսցէ առն
յիմարի որ շինեաց զտուն իւր ի վերայ
27 աւազոյ. Իջին անձրեւք, յարեան
գետք, շնչեցին հողմք, հարին զտունն,
եւ անկաւ. եւ էր կործանումն նորա
մեծ յոյժ։
28 Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յիսուս
[2]զամենայն զբանս զայսոսիկ, զարմա-
նային ժողովուրդքն ընդ վարդապե-
29 տութիւն նորա. Զի իբրեւ իշխանու-
թեամբ [3]ուսուցանէր, եւ ոչ՝ որպէս
դպիրքն նոցա։

## ԳԼ. Ը

1 Այլ իբրեւ էջ ի լեռնէ անտի, գնացին
2 զհետ նորա ժողովուրդք բազումք։ Եւ
ահա մատուցեալ բորոտ մի երկիր պա-
գանէր նմա եւ ասէր, Տէր, եթէ կա-
3 միս, կարող ես զիս սրբել։ Զգեաց
զձեռն իւր եւ հասոյց ի նա Յիսուս
եւ ասէ, Կամիմ, սրբեաց. եւ վաղվա-
ղակի սրբեցաւ ի նմանէ բորոտու-
4 թիւնն։ Եւ ասէ ցնա Յիսուս, Զգոյշ
լեր, մի՛ ումեք ասիցես, այլ երթ ցոյց
զանձն քո քահանային, եւ մատո
զպատարագն զոր հրամայեաց Մովսէս
ի վկայութիւն նոցա։
5 Եւ մտեալ ի Կափառնաում, մատ-
եաւ առ նա հարիւրապետ մի, աղաչէր
6 զնա, Եւ ասէր, Տէր, մանուկ իմ
անկեալ կայ ի տան անդամալոյծ՝ չա-
7 րաչար տանջեալ։ Ասէ ցնա Յիսուս,
8 Ես եկից եւ բժշկեցից զնա։ Պատաս-
խանի ետ հարիւրապետն եւ ասէ,
Տէր, չեմ բաւական եթէ ընդ յարկաւ
իմով մտցես. այլ ասա բանիւ, եւ
9 բժշկեսցի մանուկն իմ։ Քանզի եւ ես
այր մի եմ ընդ իշխանութեամբ, ու-
նիմ ընդ ինեւ զինուորս. ասեմ սմա,
Երթ, եւ երթայ. եւ այլում թէ, Եկ,
եւ գայ. եւ ծառայի իմում թէ, Արա
10 զայս, եւ առնէ։ Իբրեւ լուաւ Յիսուս,
զարմացաւ, եւ ասէ զայնոսիկ որ
զհետն երթային, Ամէն ասեմ ձեզ,
եւ ոչ յԻսրայէլի այսպիսի հաւատս
11 գտի երբեք։ Բայց ասեմ ձեզ զի բա-
զումք յարեւելից եւ յարեւմտից ե-
կեսցեն եւ բազմեսցին ընդ Աբրահամու
եւ ընդ Սահակայ եւ ընդ Յակոբու
12 յարքայութեան երկնից. Եւ որդիքն

[1]Ոմանք, քանզի [2]Ի Բազումս պակաս

[3]Յոմն, ուսուցանէր զնոսա

արքայութեան ելցեն ի խաւարն ար-
տաքին. անդ եղիցի լալ եւ կրճել
13 ատամանց։ Եւ ասէ Յիսուս ցհարիւ-
րապետն, Երթ, եւ որպէս հաւատա-
ցերդ՝ եղիցի քեզ. եւ ողջացաւ մա-
14 նուկն նորա [1]յաւուր յայնմիկ։ Եւ
եկեալ Յիսուս ի տուն Պետրոսի, ե-
տես զի զոքանչ նորա անկեալ դնէր
15 տապացեալ. Կալաւ զձեռանէ նորա,
եւ եթող զնա ջերմն. յառնէր եւ
պաշտէր [2]զնա։
16 Իբրեւ եղեւ երեկոյ, մատուցին առ
նա դիւահարս բազումս, եւ եհան
զայսսն բանիւ, եւ զամենայն հի-
17 ւանդսն բժշկեաց. Զի լցցի բանն որ
ասացաւ ի ձեռն Եսայեայ մարգարէի,
Նա զհիւանդութիւնս մեր վերացոյց
եւ զցաւս մեր եբարձ։
18 Գ.Կ. Տեսեալ Յիսուսի ժողովուրդս
բազումս զիւրեւ, հրամայեաց երթալ
19 յայնկոյս։ Եւ մատուցեալ դպիր մի
ասէ ցնա, Վարդապետ, եկից եւ ես
20 զկնի քո, յոր վայր եւ երթիցես։ Ասէ
ցնա Յիսուս, Աղուեսուց որջք գոն,
եւ թռչնոց երկնից՝ բոյնք, այլ Որդւոյ
մարդոյ ոչ գոյ ուր դիցէ զգլուխ իւր։
21 Եւ մի ոմն յաշակերտաց նորա ասէ
ցնա, Տէր, տուր ինձ հրաման զի եր-
22 թայց նախ թաղեցից զհայր իմ։ Ասէ
ցնա Յիսուս, Եկ զկնի իմ, եւ թող
տուր մեռելոցն թաղել զմեռեալս իւր-
եանց։
23 Եւ իբրեւ եմուտ ի նաւն, գնացին
24 զկնի նորա աշակերտքն նորա. Եւ
ահա շարժումն մեծ եղեւ ի ծովուն
մինչ նաւին ծածկել յալեաց անտի,
25 եւ ինքն ննջէր։ Եւ մատուցեալ աշա-
կերտքն յարուցին զնա եւ ասեն, Տէր,
26 փրկեա զմեզ զի կորնչիմք։ Եւ ասէ
ցնոսա, Ընդէ՞ր վատասիրտք էք, սա-
կաւահաւատք. յայնժամ յարուցեալ
սաստեաց հողմոյն եւ ծովուն, եւ ե-
27 ղեւ խաղաղութիւն մեծ։ Եւ մարդիկն
զարմացան, եւ ասէին, Որպիսի՞ ոք
իցէ սա, զի եւ հողմք եւ ծով հնա-
զանդին սմա։
28 Եւ իբրեւ անց յայնկոյս յերկիրն
Գերգեսացւոց, պատահեցին նմա դի-
ւահարք երկու, ելեալք ի գերեզմա-
նացն, չարաչարք յոյժ, որպէս զի չէր
հնար անցանել ումեք ընդ այն ճանա-
29 պարհ։ Եւ ահա աղաղակեցին եւ ա-
սեն, Զի՞ կայ մեր եւ քո, Յիսուս,
Որդի Աստուծոյ, եկիր տարաժամ
30 տանջե՞լ զմեզ։ Եւ էր հեռագոյն ի նո-
ցանէ երամակ մի [3]խոզից արօտական։
31 Եւ դեւքն աղաչէին զնա եւ ասէին,
Եթէ հանես զմեզ աստի, հրաման
տուր մեզ երթալ յերամակ խոզիցն։
32 Եւ ասէ ցնոսա, Երթայք. եւ նոքա
ելեալ գնացին յերամակն խոզից. եւ
դիմեաց ամենայն երամակն ի դարէ
33 անտի ի ծով, եւ մեռան ի ջուրսն։ Եւ
խոզարածքն փախեան, եւ երթեալ ի
քաղաքն պատմեցին զամենայն, եւ
34 զիրս դիւահարացն։ Եւ ահա ամենայն
քաղաքն ել ընդ առաջ Յիսուսի. իբրեւ
տեսին զնա, աղաչեցին զի գնասցէ ի
սահմանաց նոցա։

## Գլ. Թ

1 Եւ մտեալ ի նաւ անց յայնկոյս եւ
2 եկն ի քաղաք իւր։ Եւ ահա մատու-
ցին առ նա անդամալոյծ մի որ դնէր
ի մահիճս. եւ տեսեալ Յիսուսի զհա-
ւատս նոցա՝ ասէ ցանդամալոյծն,
3 [4]Թողեալ լիցին քեզ մեղք քո։ Եւ ահա
ոմանք ի դպրացն ասեն ընդ միտս,
4 Հայհոյէ դա։ Եւ ծանուցեալ Յիսուսի
զխորհուրդս նոցա՝ ասէ ցնոսա, Ընդէ՞ր
խորհիք դուք չարիս ի սիրտս ձեր.
5 Զի՞նչ դիւրին է. ասել՝ Թողեալ լիցին
քեզ մե՞ղք քո, թէ ասել՝ Արի եւ շըր-
6 ջեաց։ Այլ զի գիտասջիք եթէ իշխա-
նութիւն ունի Որդի մարդոյ յերկրի
թողուլ զմեղս, (յայնժամ ասէ ցան-
դամալոյծն,) Արի, առ զմահիճս քո եւ
7 երթ ի տուն քո։ Եւ յարուցեալ գնաց
8 ի տուն իւր։ Իբրեւ տեսին ժողո-
վուրդքն, զարմացան եւ փառաւոր
առնէին զԱստուած, զտուիչն այնպիսի
իշխանութեան՝ մարդկան։
9 Գ.Բ. Եւ անցեալ ընդ այն Յիսուսի՝
ետես այր մի զի նստէր ի մաքսաւո-
րութեան, Մատթէոս անուն, եւ ասէ
ցնա, Եկ զկնի իմ. եւ յարուցեալ գնաց
10 զկնի նորա։ Եւ եղեւ իբրեւ բազմեալ

---

[1]Յոյն, ի ժամուն
[2]Ոմանք, զնոսա

[3]Բազում., խոզից բազմաց
[4]Յոյն, Քաջալերեաց, որդեակ, Թողեալ

էր նա ի տանն, և ահա բազում մաք-
սաւորք և մեղաւորք եկեալ և բազ-
մեալ էին ընդ Յիսուսի և ընդ աշա-
11 կերտս նորա։ Իբրև տեսին փարիսե-
ցիքն, ասեն ցաշակերտս նորա, Ընդէ՞ր
ընդ մաքսաւորս և ընդ մեղաւորս
12 ուտէ վարդապետն ձեր։ Իսկ Յիսուս
իբրև լուաւ, ասէ ցնոսա, Ոչ է պի-
տոյ բժիշկ կարողաց, այլ հիւանդաց։
13 Երթայք, ուսարուք զի՛նչ է, Զողոր-
մութիւն կամիմ և ոչ զզոհ. զի ոչ
եկի կոչել զարդարս, այլ [1]զմեղաւորս։
14 Յայնժամ մատեան առ նա աշա-
կերտքն Յովհաննու և ասեն, Ընդէ՞ր
մեք և փարիսեցիքն պահեմք յաճախ,
15 և քո աշակերտքդ ոչ պահեն։ Ասէ
ցնոսա Յիսուս, Միթէ մարթ ինչ իցէ
մանկանց առագաստի սուգ առնել,
մինչ փեսայն ընդ նոսա իցէ. այլ ե-
կեսցեն աւուրք, յորժամ բարձցի ի նո-
ցանէ փեսայն, և ապա պահեսցեն։
16 Ոչ ոք արկանէ կապերտ անթափ ի
վերայ հնացեալ ձորձոյ. զի առնու ե-
լանէ [2]զլրութիւն նորա ի հանդերձէն,
17 և ևս չար պատառումն լինի։ Եւ ոչ
արկանեն գինի նոր ի տիկս հինս.
ապա թէ ոչ՝ տիկքն պատառին և գի-
նին հեղու, և տիկքն կորնչին. այլ
արկանեն զգինի նոր ի տիկս նորս, և
երկոքին պահին։
18 Գ.Գ. Մինչդեռ նա զայս խօսէր ընդ
նոսա, ահա իշխան մի մատուցեալ եր-
կիր պագանէր նմա և ասէր, Դուստր
իմ արդ ևս վախճանեցաւ, այլ եկեալ
դիցես զձեռն քո ի վերայ նորա, և
19 կեցցէ։ Յարեաւ Յիսուս և գնաց զկնի
նորա աշակերտօքն հանդերձ։
20 Եւ ահա կին մի տեռատես երկո-
տասանամեայ մատուցեալ յետոյ՝ մեր-
ձեցաւ ի գրօշակ հանդերձի նորա.
21 Քանզի ասէր ի մտի իւրում, Թէ միայն
մերձենամ ի հանդերձս նորա, փրկիմ։
22 Իսկ Յիսուս իբրև դարձաւ և ետես
զնա, ասէ, Քաջալերեաց, դուստր,
հաւատք քո կեցուցին զքեզ. և փըր-
կեցաւ կինն ի ժամէն յայնմանէ։
23 Իբրև եկն Յիսուս ի տուն իշխանին,
և ետես զփողահարսն և ամբոխ յոյժ,
24 Ասէ ցնոսա, Ի բաց գնացէք, զի ոչ
եթէ մեռեալ է աղջիկդ, այլ ննջէ. և
25 ծաղր առնէին զնա։ Եւ իբրև ել ամ-
բոխն ի բաց, եմուտ, կալաւ զձեռանէ
26 նորա, և յարեաւ աղջիկն։ Եւ ել
համբաւս այս ընդ ամենայն երկիրն
ընդ այն։
27 Գ.Դ. Եւ մինչդեռ անցանէր ընդ այն
Յիսուս, զհետ եղեն նորա կոյրք երկու,
աղաղակէին և ասէին, Ողորմեաց
28 մեզ, Որդի Դաւթի։ Եւ իբրև եկն
ի տուն, մատեան առ նա կոյրքն. և
ասէ ցնոսա Յիսուս, Հաւատա՞յք եթէ
կարող եմ առնել ձեզ զայդ. ասեն
29 ցնա, Այո, Տէր։ Յայնժամ մերձեցաւ
յաչս նոցա, և ասէ, Ըստ հաւատոց
30 ձերոց եղիցի ձեզ։ Եւ բացան աչք
նոցա. և սաստեաց նոցա Յիսուս և
ասէ, Զգոյշ կացէք, մի՛ ոք գիտասցէ։
31 Եւ նոքա ելեալ համբաւեցին զնա ընդ
ամենայն երկիրն ընդ այն։
32 Եւ յելանելն նոցա արտաքս, ահա
մատուցին առ նա այր մի համր դիւա-
33 հար։ Եւ յելանել դիւին՝ խօսեցաւ
համրն. և զարմացան ժողովուրդքն
և ասեն թէ, Եւ ոչ երբեք երեւեցաւ
34 այսպիսի ինչ յԻսրայէլի։ Իսկ փարի-
սեցիքն ասէին թէ, Իշխանաւն դիւաց
հանէ զա զդեւս։
35 Գ.Ե. Եւ շրջէր Յիսուս ընդ ամենայն
քաղաքս և ընդ գեղս, ուսուցանէր
ի ժողովուրդս նոցա, և քարոզէր զա-
ւետարանն արքայութեան, և բժշկէր
զամենայն ախտս և զամենայն հի-
36 ւանդութիւնս ի ժողովրդեանն։ Եւ
տեսեալ զժողովուրդսն՝ գթացաւ ի նո-
սա, զի էին աշխատեալք և ցրուեալք
իբրև զոչխարս որոց ոչ իցէ հովիւ։
37 Յայնժամ ասէ ցաշակերտս իւր, Հունձք
38 բազում են, և մշակք սակաւ. Արդ
աղաչեցէք զՏէր հնձոց, զի հանցէ
մշակս ի հունձս իւր։

Գլ. Ժ

1 Եւ կոչեցեալ առ ինքն զերկոտասա-
նեսին աշակերտսն իւր՝ ետ նոցա իշ-
խանութիւն այսոց պղծոց հանել զնո-
սա, և բժշկել զամենայն ցաւս և
2 զամենայն հիւանդութիւնս։ Եւ առա-
քելոցն երկոտասանից էին անուանք
այսոքիկ. առաջին Սիմոն, անուա-
նեալն Պետրոս, և Անդրէաս եղբայր

[1]Ոմանք, զմեղաւորս յապաշխարութիւն
[2]կամ, լրութիւն

3 նորա, Յակոբոս Զեբեդեայ եւ Յով-
հաննէս եղբայր նորա, Փիլիպպոս եւ
Բարթողոմէոս, Թովմաս եւ Մատթէոս
մաքսաւոր, Յակոբոս Ալփեայ եւ Ղէ-
4 բէոս որ անուանեցաւն Թադէոս, Սի-
մովն Կանանացի եւ Յուդա Իսկարիով-
5 տացի, որ եւ մատնեացն զնա։ Զնոսա
երկոտասանեսին առաքեաց Յիսուս,
պատուիրեաց նոցա եւ ասէ, Ի ճանա-
պարհ հեթանոսաց մի՛ երթայցէք, եւ
ի քաղաք Սամարացւոց մի՛ մտանիցէք,
6 Այլ երթայք առաւել առ ոչխարսն կո-
7 րուսեալս տանն Իսրայելի։ Եւ իբրեւ
երթայցէք, քարոզեցէք եւ ասացէք
թէ, Մերձեալ է արքայութիւն երկ-
8 նից։ Զհիւանդս բժշկեցէք, [1]զբորոտս
սրբեցէք, զդեւս հանէք, ձրի առէք եւ
9 ձրի տուք։ Մի՛ ստանայք ոսկի, եւ
մի՛ արծաթ, եւ մի՛ պղինձ ի գօտիս
10 ձեր, Մի՛ պարկ ի ճանապարհ, եւ մի՛
երկուս հանդերձս, մի՛ կօշիկս, մի՛
գաւազան, զի արժանի է մշակն կերակրոյ
11 իւրում։ Յոր քաղաք մտանիցէք կամ
ի գեղ, հարցանիցէք թէ ո՞ է ի նմա
արժանի, եւ անդ լինիջիք մինչեւ ե-
12 լանիցէք անտի։ Եւ իբրեւ մտանիցէք
ի տունն, ողջոյն տայջիք նմա [2]եւ ա-
13 սասջիք, Ողջոյն տանս այսմիկ"։ Եթէ
իցէ տունն արժանի, եկեսցէ ողջոյնն
ձեր ի վերայ նորա. ապա թէ ոչ իցէ
արժանի, ողջոյնն ձեր առ ձեզ դարձ-
14 ցի։ Եւ որ ոչ ընկալցի զձեզ եւ ոչ
լուիցէ բանից ձերոց, իբրեւ ելանիցէք
ի տանէն կամ ի քաղաքէն յայնմանէ,
թօթափեսջիք զփոշին յոտից ձերոց։
15 Ամէն ասեմ ձեզ, Դիւրագոյն լիցի
երկրին Սոդոմացւոց եւ Գոմորայեցւոց
յաւուրն դատաստանի, քան քաղաքին
այնմիկ։

16 ԳՋ. Ահաւասիկ ես առաքեմ զձեզ
իբրեւ զոչխարս ի մէջ գայլոց. եղե-
րուք այսուհետեւ խորագէտք իբրեւ
զօձս, եւ միամիտք իբրեւ զաղաւնիս։
17 Զգոյշ լինիջիք ի մարդկանէ, զի մատ-
նեսցեն զձեզ յատեանս, եւ ի ժողո-
վուրդս իւրեանց տանջեսցեն զձեզ.
18 Եւ առաջի դատաւորաց եւ թագա-
ւորաց տանիցին զձեզ վասն իմ ի վկ-
19 այութիւն նոցա եւ հեթանոսաց։ Այլ
յորժամ մատնիցեն զձեզ, մի՛ հոգայ-
ցէք թէ որպէս կամ զինչ խօսիցիք.
զի տացի ձեզ ի ժամուն յայնմիկ զինչ
20 խօսիցիք։ Զի ոչ եթէ դուք իցէք որ
խօսիցիքն, այլ՝ Հոգին Հօր ձերոյ որ
21 խօսիցի ի ձեզ։ Մատնեսցէ եղբայր
զեղբայր ի մահ, եւ հայր՝ զորդի. եւ
յարիցեն որդիք ի վերայ հարց եւ սպա-
22 նանիցեն զնոսա։ Եւ եղիջիք ատեց-
եալք յամենեցունց վասն անուան իմոյ.
իսկ որ համբերեսցէ ի սպառ՝ նա կեցցէ։
23 Եւ յորժամ հալածիցեն զձեզ ի քաղա-
քիս յայսմիկ, փախիջիք յայլ. [2]եւ եթէ
յայնմանէ հալածիցեն զձեզ, փախիջիք
ի միւսն." ամէն ասեմ ձեզ, ոչ սպա-
ռեսջիք զքաղաքս Իսրայելի մինչեւ
24 եկեսցէ Որդի մարդոյ։ Ոչ է աշակերտ
առաւել քան զվարդապետ իւր, եւ ոչ
25 ծառայ քան զտէր իւր։ Շատ իցէ ա-
շակերտին եթէ եղիցի իբրեւ զվար-
դապետ իւր, եւ ծառային՝ իբրեւ զտէր
իւր. եթէ զտանուտէրն Բէեղզեբուղ
կոչեցին, ո՛րչափ եւս առաւել զընտա-
26 նիս նորա։ Մի՛ այսուհետեւ երկնչիցիք
ի նոցանէ, զի ոչինչ է ի ծածուկ որ
ոչ յայտնեսցի, եւ գաղտնի՝ որ ոչ ծա-
27 նիցի։ Զոր ասեմ ձեզ ի խաւարի՝ ա-
սացէք ի լոյս. եւ զոր լսէք յունկանէ՝
28 քարոզեցէք ի վերայ տանեաց։ Եւ
մի՛ երկնչիք յայնցանէ որ սպանանեն
զմարմին եւ զոգի ոչ կարեն սպանա-
նել. այլ երկերուք դուք առաւել
յայնմանէ որ կարօղն է զոգի եւ զմար-
29 մին կորուսանել ի գեհենի։ Ո՞չ ապա-
քէն երկու ճնճղուկք դանգի միոջ
վաճառին, եւ մի ի նոցանէ յերկիր ոչ
30 անկցի առանց Հօր ձերոյ։ Այլ ձեր եւ
ամենայն իսկ հեր գլխոյ թուեալ է։
31 Եւ արդ մի՛ երկնչիցիք, զի լաւ էք
32 քան զբազում ճնճղուկս։ Ամենայն որ
խոստովանեսցի յիս առաջի մարդկան,
խոստովանեցայց եւ ես զնմանէ առաջի
33 Հօր իմոյ որ յերկինսն է. Եւ որ ու-
րասցի զիս առաջի մարդկան, ուրա-
ցայց եւ ես զնա առաջի Հօր իմոյ որ
34 յերկինսն է։ Մի՛ համարիք եթէ եկի
արկանել խաղաղութիւն յերկիր. ոչ
եկի արկանել խաղաղութիւն, այլ՝
35 սուր. Բանզի եկի քակել զայր ի հօրէ
իւրմէ, եւ զդուստր ի մօրէ իւրմէ,
36 եւ զհարսն ի սկեսրէ իւրմէ. Եւ թշնամ

[1]Ոմանք, զմեռեալս յարուցէք, զբորոտս

[2]Յոմանս պակասէ

37 միք առն՝ ընտանիք իւր։ Որ սիրէ
զհայր կամ զմայր առաւել քան զիս՝
ոչ է ինձ արժանի. եւ որ սիրէ զուստր
կամ զդուստր առաւել քան զիս՝ չէ
38 ինձ արժանի։ Եւ որ ոչ առնու զխաչ
իւր եւ գայ զկնի իմ՝ չէ ինձ արժա-
39 նի։ Որ գտանէ զանձն իւր՝ կորուսցէ
զնա. եւ որ կորոյս զանձն իւր վասն
40 իմ՝ գտցէ զնա։ Որ ընդունի զձեզ՝ զիս
ընդունի, եւ որ զիս ընդունի՝ ընդու-
41 նի զառաքիչն իմ։ Որ ընդունի զմար-
գարէ յանուն մարգարէի՝ զվարձս մար-
գարէի առցէ. եւ որ ընդունի զարդար
յանուն արդարոյ՝ զվարձս արդարոյ
42 առցէ։ Եւ որ արբուսցէ միում ի փոքր-
կանցս յայսցանէ բաժակ մի ջուր ցուրտ
միայն՝ յանուն աշակերտի, ամէն ասեմ
ձեզ, ոչ կորուսցէ զվարձս իւր։

## Գլ. ԺԱ

1 Գէ. Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յի-
սուս զպատուէր երկոտասանից աշա-
կերտացն իւրոց, գնաց անտի քարոզել
եւ ուսուցանել ի քաղաքս նոցա։
2 Իսկ Յովհաննէս իբրեւ լուաւ ի
բանտին զգործսն Քրիստոսի, առա-
քեաց [1]ի ձեռն աշակերտաց" իւրոց,
3 Եւ ասէ ցնա, Դո՞ւ ես որ գալոցն ես,
4 եթէ այլում ակն կալցուք։ Պատաս-
խանի ետ Յիսուս եւ ասէ ցնոսա,
Գնացէք պատմեցէք Յովհաննու զոր
5 լուայք եւ տեսէք. Կոյրք տեսանեն,
կաղք գնան, բորոտք սրբին, եւ խուլք
լսեն, եւ մեռեալք յառնեն, եւ աղքատք
6 աւետարանին։ Եւ երանեալ է որ ոչ
գայթակղեսցի յիս։
7 Եւ իբրեւ նոքա գնացին, սկսաւ
Յիսուս ասել ցժողովուրդսն զՅովհան-
նէ, Զի՞նչ ելէք տեսանել յանապատին.
8 եղէ՞գն շարժուն ի հողմոյ։ Այլ զի՞նչ
ելէք տեսանել. մա՞րդ ի հանդերձս
փափկութեան զարդարեալ. ահաւասիկ
որ զփափուկսն զգեցեալ են՝ ի տունս
9 թագաւորաց են։ Այլ զի՞նչ ելէք տե-
սանել. մարգարէ՞. այո, ասեմ ձեզ,
10 եւ առաւել եւս քան զմարգարէ։ Զի
նա է վասն որոյ գրեալն է. Ահա ես
առաքեցից զհրեշտակ իմ առաջի երե-
սաց քոց, որ պատրաստեսցէ զճանա-
11 պարհս քո առաջի քո։ Ամէն ասեմ
ձեզ, Զէ յարուցեալ ի ծնունդս կա-
նանց մեծ քան զՅովհաննէս մկրտիչ.
բայց փոքրիկն յարքայութեան երկնից՝
12 մեծ է քան զնա։ Բայց յաւուրցն Յով-
հաննու մկրտչի մինչեւ ցայժմ ար-
քայութիւնն երկնից բռնադատի, եւ
13 բռունք յափշտակեն զնա։ Քանզի ա-
մենայն օրէնք եւ մարգարէք մինչեւ
14 ցՅովհաննէս մարգարէացան. Եւ եթէ
կամիք ընդունել, նա է Եղիա որ գա-
15 լոցն է։ Որ ունիցի ականջս լսելոյ՝
16 լուիցէ։ Ո՞ւմ նմանեցուցից զազգս
զայս. նման է մանկտւոյ որ նստիցին
ի հրապարակս, կարդայցեն զընկերս
17 իւրեանց, Եւ ասիցեն, Փող հարաք
ձեզ եւ ոչ կաքաւեցէք, ողբացաք ձեզ
18 եւ ոչ կոծեցարուք։ Եկն Յովհաննէս,
ոչ ուտէր եւ ոչ ըմպէր, եւ ասեն,
19 Դեւ գոյ ի նմա։ Եկն Որդի մարդոյ,
ուտէ եւ ըմպէ, եւ ասեն, Ահա այր
կերող եւ արբեցող, բարեկամ մաք-
սաւորաց եւ մեղաւորաց. եւ արդա-
րացաւ իմաստութիւն յորդւոց իւրոց։
20 Յայնժամ սկսաւ նախատել զքաղաքսն
յորս եղեն բազում զօրութիւնք նորա
21 եւ ոչ ապաշխարեցին. Վա՜յ քեզ, Քո-
րազին, վա՜յ քեզ, Բեթսայիդա. զի
եթէ ի Տիւրոս եւ ի Սիդովն եղեալ էին
զօրութիւնքն որ ի ձեզ եղեն, վաղու
եւս արդեւք խորգով եւ մոխրով ա-
22 պաշխարեալ էր։ Բայց ասեմ ձեզ,
Դիւրագոյն լիցի երկրին Տիւրոսի եւ
Սիդովնի յաւուրն դատաստանի քան
23 ձեզ։ Եւ դու, Կափառնայում, [2]մի՞
մինչեւ յերկինս բարձրասցիս, այլ"
մինչեւ ի դժոխս իջցես. զի եթէ ի
Սոդոմ եղեալ էին զօրութիւնքն որ
ի քեզ եղեն, ապաքէն կային եւս մին-
24 չեւ ցայսօր։ Բայց ասեմ ձեզ եթէ,
Երկրին Սոդոմացւոց դիւրագոյն լիցի
յաւուրն դատաստանի քան քեզ։
25 Գդ. Յայնմ ժամանակի պատասխանի
ետ Յիսուս եւ ասէ, Գոհանամ զքէն,
Հայր, Տէր երկնի եւ երկրի, զի ծած-
կեցեր զայս յիմաստնոց եւ ի գիտնոց,
26 եւ յայտնեցեր տղայոց։ Այո, Հայր,
զի այսպէս հաճոյ եղեւ առաջի քո։
27 Ամենայն ինչ տուաւ ինձ ի Հօրէ իմմէ.
եւ ոչ ոք ճանաչէ զՈրդի՝ եթէ ոչ Հայր,

[1]Ոմն., զերկուս յաշակերտաց

[2]Ոմն., որ մինչեւ յերկինս բարձրացեալ ես,

եւ ոչ զՀայր ոք ճանաչէ եթէ ոչ
Որդի, եւ ում Որդին կամիցի յայտնել։
28 Եկայք առ իս, ամենայն վաստակեալք
եւ բեռնաւորք, եւ ես հանգուցից
29 զձեզ։ Առէք զլուծ իմ ի ձեզ, եւ ու-
սարուք յինէն, զի հեզ եմ եւ խոնարհ
սրտիւ, եւ գտջիք հանգիստ անձանց
30 ձերոց։ Զի լուծ իմ քաղցր է, եւ բեռն
իմ՝ փոքրոգի։

## Գլ. ԺԲ

1 ԴԲ. Յայնժամ գնաց Յիսուս ընդ
արտորայսն նոցա ի շաբաթու, եւ ա-
շակերտքն նորա քաղցեան եւ սկսան
2 հասկ կորզել եւ ուտել։ Փարիսեցիքն
իբրեւ տեսին, ասեն ցնա, Ահաւասիկ
աշակերտքն քո գործեն զոր ոչ է ար-
3 ժան գործել ի շաբաթու։ Եւ նա ասէ
ցնոսա, Ո՞չ իցէ ընթերցեալ ձեր զոր
արար Դաւիթ, յորժամ քաղցեաւն,
4 եւ որ ընդ նմայն էին. Զիա՛րդ եմուտ
ի տունն Աստուծոյ եւ եկեր զհաց զա-
ռաջաւորութեանն, զոր ոչ էր օրէն
նմա ուտել, եւ ոչ՝ որոց ընդ նմայն
5 էին, բայց միայն քահանայից։ Կամ թէ
չիցէ՞ ընթերցեալ յօրէնս, զի ի շա-
բաթս քահանայքն ի տաճարին պղծեն
6 զշաբաթն եւ անմեղք են։ Բայց ասեմ
ձեզ, զի մեծ քան զտաճարն է աստ։
7 Եւ եթէ գիտէիք զինչ է Զողորմու-
թիւն կամիմ եւ ոչ զզոհ, ապա ոչ
դատապարտէիք դուք զանպարտսն։
8 Զի տէր է շաբաթու Որդին մարդոյ։
9 Եւ գնացեալ անտի Յիսուս՝ եկն ի ժո-
10 ղովուրդն նոցա։ Եւ անդ էր այր մի
որոյ ձեռն իւր գօսացեալ էր. հարցին
զնա եւ ասեն եթէ, Պա՞րտ իցէ ի շա-
բաթու բժշկել, զի շարախօսեսցեն
11 զնմանէ։ Եւ նա ասէ ցնոսա, Ո՞վ է
ի ձէնջ մարդ որոյ իցէ ոչխար մի, եւ
անկանիցի այն ի խորխորատ ի շաբա-
թու, միթէ ո՞չ ունիցի եւ յարուցա-
12 նիցէ զնա։ Իսկ արդ ո՜րչափ եւս ա-
ռաւել է մարդ քան զոչխար. ապա
ուրեմն պարտ է ի շաբաթու բարիս
13 գործել։ Յայնժամ ասէ ցայրն, Ձգեա
զձեռն քո, եւ նա ձգեաց եւ եղեւ ողջ
14 իբրեւ զմիւսն։ Իսկ փարիսեցիքն ելեալ
արտաքս խորհուրդ առին զնմանէ թէ
ո՛րպէս կորուսցեն զնա։
15 Եւ Յիսուս իբրեւ գիտաց, մեկնե-
ցաւ անտի. եւ գնացին զհետ նորա
ժողովուրդք բազումք, եւ բժշկեաց
16 զամենեսեան։ Եւ սաստեաց նոցա զի
17 մի՛ յայտնեսցեն զնմանէ ումեք։ Զի
լցցի որ ասացաւն ի ձեռն Եսայեայ
18 մարգարէի, Ահա մանուկ իմ զոր ընտ-
րեցի, եւ սիրելի իմ ընդ որ հաճեցաւ
անձն իմ. եդից զՈգի իմ ի վերայ նո-
րա, եւ իրաւունս հեթանոսաց պատ-
19 մեսցէ։ Ոչ հակառակեսցի եւ ոչ ա-
ղաղակեսցէ, եւ ոչ ոք լուիցէ ի հրա-
20 պարակս զբարբառ նորա։ Զեղէգն
ջախջախեալ ոչ փշրեսցէ, եւ զպատ-
րոյգն առկայծեալ ոչ շիջուսցէ, մին-
չեւ հանցէ ի յաղթութիւն զդատաս-
21 տանն. Եւ յանուն նորա հեթանոսք
յուսասցին։
22 ԴԳ. Յայնժամ մատուցաւ առ նա
դիւահար մի կոյր եւ համր, եւ բժշ-
կեաց զնա, որպէս զի համրն եւ կոյրն
23 խօսիցի եւ տեսանիցէ։ Զարմացան
ամենայն ժողովուրդքն եւ ասէին,
Միթէ սա՞ իցէ [1]Քրիստոսն որդի Դաւ-
24 թի՞։ Բայց փարիսեցիքն իբրեւ լուան,
ասեն, Ոչ իւիք հանէ դա զդեւս, եթէ
ոչ Բէեղզեբուղաւ իշխանաւն դիւաց։
25 Իբրեւ գիտաց Յիսուս զխորհուրդս
նոցա, ասէ ցնոսա, Ամենայն թագա-
ւորութիւն բաժանեալ յանձն իւր ա-
ւերի. եւ ամենայն քաղաք կամ տուն
26 բաժանեալ յանձն իւր՝ ոչ կացցէ։ Եւ
եթէ Սատանայ զՍատանայ հանէ,
յանձն իւր բաժանեցաւ. արդ զիա՞րդ
27 կացցէ թագաւորութիւն նորա։ Եւ
եթէ ես Բէեղզեբուղաւ հանեմ զդեւս,
որդիքն ձեր իւ՞ հանիցեն. վասն այնո-
րիկ նոքա եղիցին ձեր դատաւորք։
28 Ապա եթէ Հոգւով Աստուծոյ հանեմ
ես զդեւս, ուրեմն հասեալ է ի վերայ
29 ձեր արքայութիւն Աստուծոյ։ Կամ
զիա՞րդ կարէ ոք մտանել ի տուն հզ-
օրի եւ զգործիսն նորա յափշտակել,
եթէ ոչ նախ կապիցէ զհզօրն, եւ ապա
30 զտունն նորա յափշտակիցէ։ Որ ոչ
ընդ իս է՝ հակառակ իմ է, եւ որ ոչ
31 ժողովէ ընդ իս՝ ցրուէ։ Վասն այսորիկ
ասեմ ձեզ, Ամենայն մեղք եւ հայհո-
յութիւնք թողցին մարդկան. բայց
զՀոգւոյն հայհոյութիւն մի՛ թողցի[2]։

---

[1]Բազումք, որդին Դաւթի
[2]Ոմանք յաւելուն, մարդկան

32 Եւ որ ոք ասիցէ բան զՈրդւոյ մար-
դոյ՝ թողցի նմա, բայց որ զՀոգւոյն
Սրբոյ ասիցէ՝ մի՛ թողցի նմա, մի՛
յայսմ աշխարհի եւ մի՛ ի հանդերձե-
33 լումն։ Կա՛մ արարէք զծառն բարի եւ
զպտուղ նորա բարի, կա՛մ արարէք
զծառն չար եւ զպտուղ նորա չար.
քանզի ի պտղոյ անտի ծառն ճանաչի։
34 Ծնունդք իժից, զիա՞րդ կարիցէք բա-
րիս խօսել որ չարքդ էք. քանզի ի
35 յաւելուածոյ սրտի խօսի բերան։ Մարդ
բարի ի բարի գանձուց [1]սրտի իւրոյ"
հանէ զբարիս. եւ մարդ չար ի չար
գանձուց [1]սրտի իւրոյ" հանէ զչարիս։
36 Բայց ասեմ ձեզ թէ, Ընդ ամենայն
դատարկ բանի զոր խօսիցին մարդիկ՝
տայցեն համար յաւուրն դատաստանի։
37 Զի ի բանից քոց արդարասցիս, եւ ի
բանից քոց պարտաւորեսցիս։
38 ԴԴ. Յայնժամ պատասխանի ետուն
նմա ոմանք ի դպրացն եւ ի փարիսեց-
ւոց եւ ասեն, Վարդապետ, կամիմք
39 նշան ինչ տեսանել ի քէն։ Նա պա-
տասխանի ետ եւ ասէ ցնոսա, Ազգ
չար եւ շնացող նշան խնդրէ. եւ նշան
մի՛ տացի նմա, բայց նշանն Յովնանու
40 մարգարէի։ Զի որպէս էր Յովնան ի
փոր կիտին զերիս տիւս եւ զերիս
գիշերս, նոյնպէս եղիցի եւ Որդի մար-
դոյ ի սիրտ երկրի զերիս տիւս եւ զե-
41 րիս գիշերս։ Արք Նինուէացիք յարից-
ցեն ի դատաստանի ընդ ազգիս ընդ
այսմիկ եւ դատապարտեսցեն զսա, զի
զղջացան ի քարոզութեանն Յովնանու.
եւ արդ աւասիկ մեծ քան զՅովնան է
42 աստ։ Դշխոյն հարաւոյ յարիցէ ի դա-
տաստանի ընդ ազգիս ընդ այսմիկ եւ
դատապարտեսցէ զսա. զի եկն ի ծա-
գաց երկրի լսել զիմաստութիւնն Սո-
ղոմոնի, եւ ահա մեծ քան զՍողոմոն
43 է աստ։ Այլ յորժամ այսն պիղծ ելանէ
ի մարդոյ, շրջի ընդ անջրդին տեղիս,
44 խնդրէ հանգիստ եւ ոչ գտանէ. Յայն-
ժամ ասէ, Դարձայց ի տուն իմ ուստի
ելի. եւ եկեալ գտանէ զնա պարա-
45 պորդ, մաքրեալ եւ յարդարեալ։ Յայն-
ժամ երթայ եւ առնու ընդ իւր եւթն
այլ այսս չարագոյնս քան զինքն, եւ
մտեալ բնակէ անդ. եւ լինի յետինն
մարդոյն այնորիկ չար քան զառաջինն.
այնպէս եղիցի եւ ազգիս այսմիկ չարի։
46 Մինչդեռ նա ընդ ժողովուրդսն խօսէր,
ահա մայր նորա եւ եղբարք նորա
կային արտաքոյ եւ խնդրէին խօսել
47 ընդ նմա։ Եւ ասէ ոմն ցնա, Ահա
մայր քո եւ եղբարք քո կան արտա-
48 քոյ եւ խնդրեն խօսել ընդ քեզ։ Նա
պատասխանի ետ այնմիկ որ ասացն
ցնա, եւ ասէ, Ո՞վ է իմ մայր, կամ
49 ո՞վ են իմ եղբարք։ Եւ ձգեալ զձեռն
իւր յաշակերտսն՝ ասէ, Ահաւասիկ
50 մայր իմ եւ եղբարք իմ։ Զի որ ա-
նիցէ զկամս Հօր իմոյ որ յերկինսն է՝
նա է իմ եղբայր եւ քոյր եւ մայր։

## ԳԼ. ԺԳ

1 ԴԵ. Յաւուր յայնմիկ ելեալ Յիսուս
2 ի տանէն՝ նստէր առ ծովեզերբն։ Եւ
ժողովեցան առ նա ժողովուրդք բա-
զումք, մինչեւ մտանել նմա ի նաւն
եւ նստել. եւ ամենայն ժողովուրդն
3 կայր առ ծովեզերբն. Եւ խօսէր ընդ
նոսա բազում առակօք եւ ասէր,
4 Ահա ել սերմանահան սերմանել. եւ
ի սերմանելն իւրում՝ էր որ անկաւ
առ ճանապարհաւ, եւ [2]եկին թռչուն
5 երկնից եւ կերին զնա"։ Եւ այլն ան-
կաւ յապառաժի ուր ոչ գոյր հող բա-
զում, եւ վաղվաղակի բուսաւ առ ի
6 չգոյէ հիւթոյ երկրին. Ի ծագել արե-
գու տապացաւ, եւ զի ոչ գոյին ար-
7 մատ, չորացաւ։ Եւ այլն անկաւ
ի մէջ փշոց, եւ ելին փուշքն եւ հեղ-
8 ձուցին զնա։ Եւ այլն անկաւ յերկիր
բարի, եւ տայր պտուղ՝ էր որ հա-
րիւրաւոր, եւ էր որ վաթսնաւոր, եւ
9 էր որ երեսնաւոր։ Որ ունիցի ա-
կանջս լսելոյ՝ լուիցէ։
10 Եւ մատուցեալ աշակերտքն ասեն
ցնա, Ընդէ՞ր առակօք խօսիս ընդ նո-
11 սա։ Նա պատասխանի ետ եւ ասէ
ցնոսա, Զի ձեզ տուեալ է գիտել
զխորհուրդս արքայութեան երկնից,
12 եւ նոցա չէ տուեալ։ Զի որ գուցէ՝
տացի նմա եւ յաւելցի, եւ որ ոչն
գուցէ՝ եւ զոր ունիցին բարձցի ի նմա-
13 նէ։ Վասն այնորիկ առակօք խօսիմ
ընդ նոսա, զի տեսանեն եւ ոչ տեսա-
նեն. եւ լսեն եւ ոչ լսեն եւ ոչ ա-
14 նուն ի միտ. Եւ կատարի առ նոսա

[1]Որմն+, իւրոյ

[2]Բազում+, եկին թռչունք եւ կերան զնոսա

մարգարէութիւնն Եսայեայ որ ասէ,
Լսելով լուիջիք, եւ մի՛ իմասջիք, եւ
տեսանելով տեսջիք, եւ մի՛ տեսջիք։
15 Զի թանձրացաւ սիրտ ժողովրդեանս
այսորիկ, եւ ականջօք իւրեանց ծա-
նուանս լուան, եւ զաչս իւրեանց կա-
փուցին, զի մի՛ երբեք տեսցեն աչօք
եւ ականջօք լուիցեն եւ սրտիւք ի-
մասցին եւ դարձցին, եւ բժշկեցից
16 զնոսա։ Բայց ձեր երանի է աչացդ զի
տեսանեն, եւ ականջաց ձերոց՝ զի
17 լսեն։ Ամէն ասեմ ձեզ, զի բազում
մարգարէք եւ արդարք ցանկացան տե-
սանել զոր տեսանէքդ՝ եւ ոչ տեսին,
18 եւ լսել զոր լսէքդ՝ եւ ոչ լուան։ Եւ
արդ լուարուք դուք զառակ սերմա-
19 նացանին։ Յամենայնէ որ լսէ զբանն
արքայութեան եւ ոչ առնու ի միտ,
գայ չարն եւ յափշտակէ զսերմանեալն
ի սիրտ նորա. այն է որ առ ճանա-
20 պարհաւն սերմանեցաւ։ Եւ որ յապա-
ռաժին սերմանեցաւ՝ այն է, որ իբրեւ
լսէ զբանն, եւ վաղվաղակի խնդու-
21 թեամբ ընդունի զնա։ Բայց քանզի
ոչ ունի արմատ յինքեան այլ առ
ժամանակ մի է, ի լինել նեղութեան
եւ հալածանաց վասն բանին՝ վաղվա-
22 ղակի գայթակղի։ Իսկ որ ի մէջ փշոցն
սերմանեցաւ՝ այն է, որ իբրեւ լսէ
զբանն, եւ հոգք աշխարհիս եւ պատ-
րանք մեծութեան հեղձուցանեն զբանն,
23 եւ լինի անպտուղ։ Իսկ որ յերկիրն
բարի սերմանեցաւ՝ այն է, որ իբրեւ
լսէ զբանն եւ ի միտ առնու, եւ տայ
զպտուղ, է որ հարիւր, եւ է որ վաթ-
սուն, եւ է որ երեսուն։
24 ԴԶ. Այլ առակ արկ առ նոսա եւ
ասէ, Նմանեցաւ արքայութիւնն երկ-
նից առն, որ սերմանիցէ սերմն բարի
25 յագարակի իւրում։ Եւ ի քուն լինել
մարդկան՝ եկն թշնամի նորա եւ ցա-
նեաց ի վերայ որոմն ի մէջ ցորենոյն,
26 եւ գնաց։ Եւ իբրեւ բուսաւ խոտն
եւ արար պտուղ, ապա երեւեցաւ եւ
27 որոմնն։ Մատուցեալ ծառայք տանու-
տեառնն ասեն ցնա, Տէր, ո՞չ սերմն
բարի սերմանեցեր յագարակին քում,
28 արդ ուստի՞ ունիցի զորոմնն։ Եւ նա
ասէ ցնոսա, Այր թշնամի արար զայն.
ասեն ցնա ծառայքն, Կամի՞ս զի եր-
29 թիցուք քաղեսցուք զայն ի բաց։ Եւ նա
ասէ ցնոսա, Մի՛, գուցէ մինչ քաղիցէք
զորոմնն, եւ զցորեանն ընդ նմին ի
30 բաց խլիցէք։ Թոյլ տուք երկոցունց
աճել ի միասին մինչեւ ի հունձս, եւ
ի ժամանակի հնձոց ասացից ցհնձօղսն,
Քաղեցէք նախ զորոմնդ եւ կապեցէք
զայդ ի խրձունս առ ի այրել, եւ զցոր-
եանն ժողովեցէք ի շտեմարանս իմ։
31 Այլ առակ արկ առ նոսա եւ ասէ,
Նման է արքայութիւն երկնից հատոյ
մանանխոյ, զոր առեալ մարդոյ՝ սեր-
32 մանեաց յագարակի իւրում. Որ փոքր
է քան զամենայն սերմանիս, եւ յոր-
ժամ աճիցէ, մեծ է քան զամենայն
բանջարս, եւ լինի ծառ մինչեւ գալ
թռչնոց երկնից եւ հանգչել յոստս նորա։
33 Այլ առակ խօսեցաւ ընդ նոսա եւ
ասէ, Նման է արքայութիւն երկնից
խմորոյ, զոր առեալ կնոջ՝ թաղոյց ի
գրիւս երիս ալեր մինչեւ ամենայն
խմորեցաւ։
34 Զայս ամենայն խօսեցաւ Յիսուս
առակօք ընդ ժողովուրդսն, եւ առանց
35 առակի ոչինչ խօսէր ընդ նոսա. Զի
լցցի ասացեալն ի մարգարէէն, Բացից
առակօք զբերան իմ, բխեցից զծած-
կեալսն ի սկզբանէ աշխարհի։
36 ԴԷ. Յայնժամ թողեալ Յիսուսի զժո-
ղովուրդսն՝ եկն ի տուն. մատեան առ
նա աշակերտքն նորա եւ ասեն, Մեկ-
նեա մեզ զառակ որոմանցն ագարակի։
37 Նա պատասխանի ետ եւ ասէ ցնոսա,
Որ սերմանէ զսերմն բարի՝ է Որդի
38 մարդոյ. Եւ ագարակն աշխարհս է.
սերմն բարի նոքա են որ որդիքն ար-
քայութեան են, իսկ որոմնն որդիք
39 չարին են. Եւ թշնամին որ վարեաց
զայն՝ Սատանայ է, եւ հունձքն կա-
տարած աշխարհիս է, եւ հնձողքն
40 հրեշտակք են։ Որպէս ժողովի որոմնն
եւ ի հուր այրի, այնպէս եղիցի ի կա-
41 տարածի աշխարհիս։ Առաքեսցէ Որդի
մարդոյ զհրեշտակս իւր, եւ ժողովես-
ցեն յարքայութենէ նորա զամենայն
զգայթակղութիւնս, եւ զայնոսիկ ոյք
42 գործեն զանօրէնութիւն։ Եւ արկցեն
զնոսա ի հնոց հրոյ. անդ եղիցի լալ
43 եւ կրճել ատամանց։ Յայնժամ ար-
դարքն ծագեսցեն իբրեւ զարեգակն
յարքայութեան [1]երկնից. որ ունիցի
ականջս լսելոյ՝ լուիցէ։

[1] Յօյնն, Հօր իւրեանց

44 Դարձեալ նման է արքայութիւն երկ-
նից գանձի ծածկելոյ յագարակի, զոր
գտեալ մարդոյ՝ թագոյց․ եւ ի խնդու-
թենէ անտի երթայ վաճառէ զամենայն
ինչ զոր ունի, եւ գնէ զագարակն զայն։
45 Դարձեալ նման է արքայութիւն
երկնից առն վաճառականի որ խնդրի-
46 ցէ մարգարիտս գեղեցիկս․ Եւ գտեալ
մի պատուական մարգարիտ՝ երթեալ
վաճառեաց զամենայն զոր ինչ ունէր,
եւ գնեաց զայն [1]մարգարիտ։
47 Դարձեալ նման է արքայութիւն
երկնից ուռկանի արկելոյ ի ծով եւ
48 յամենայն ազգաց ժողովելոյ․ Զոր իբ-
րեւ լցաւ, հանեալ ի ցամաք եւ նստեալ՝
ժողովեցին զբարի բարին յամանս, եւ
49 զխոտանն ի բաց ընկեցին։ Այնպէս ե-
ղիցի ի կատարածի աշխարհիս․ ելցեն
հրեշտակք եւ մեկնեսցեն զչարս ի
50 միջոյ արդարոց, Եւ արկցեն զնոսա
ի հնոց հրոյն․ անդ եղիցի լալ եւ կրճել
ատամանց։
51 Ասէ ցնոսա Յիսուս, Իմացարո՞ւք
զայս ամենայն․ ասեն ցնա, Այո, Տէր։
52 Եւ նա ասէ ցնոսա, Վասն այսորիկ
ամենայն դպիր աշակերտեալ արքայ-
ութեան երկնից նման է առն տանու-
տեառն, որ հանէ ի գանձէ իւրմէ զնոր
եւ զհին։
53 ԵԿ․ Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յի-
սուս զառակս զայսոսիկ, փոխեցաւ
54 անտի․ Եւ եկեալ ի գաւառ իւր՝ ու-
սուցանէր զնոսա ի ժողովրդեանն նո-
ցա, մինչեւ զարմանալ նոցա եւ ասել,
Սմա ուստի՞ իցէ այս իմաստութիւն
55 եւ զօրութիւնք։ Ո՞չ սա է հիւսանն
որդի․ ո՞չ մայր սորա կոչի Մարիամ,
եւ եղբարք սորա՝ Յակոբոս եւ [2]Յով-
56 սէս եւ Սիմովն եւ Յուդա․ Եւ քորք
սորա ո՞չ ամենեքեան առ մեզ են․ արդ
57 ուստի՞ է սմա այս ամենայն։ Եւ գայ-
թակղէին ի նա․ եւ Յիսուս ասէ ցնո-
սա, Չիք մարգարէ անարգ եթէ ոչ
յիւրում գաւառի եւ յիւրում տան։
58 Եւ ոչ արար անդ զօրութիւնս բա-
զումս վասն անհաւատութեան նոցա։

ԳԼ․ ԺԴ

1 ԵԲ․ Յայնմ ժամանակի լուաւ Հե-
րովդէս չորրորդապետ զլուր Յիսուսի․
2 Եւ ասէ ցծառայս իւր, Նա է Յով-
հաննէս մկրտիչ․ նա յարեաւ ի մեռե-
լոց, եւ վասն այնորիկ զօրութիւնք
լինին նովաւ։
3 Քանզի Հերովդէս կալեալ զՅովհան-
նէս, կապեաց զնա եւ եդ ի բանտի
վասն Հերովդիայ, կնոջ Փիլիպպոսի
4 եղբօր նորա։ Զի ասէր ցնա Յովհան-
5 նէս, Ոչ է արժան քեզ ունել զդա։ Եւ
կամէր զնա սպանանել, բայց երկնչէր
ի ժողովրդենէ անտի, քանզի իբրեւ
6 զմարգարէ ունէին զնա։ Եւ իբրեւ
եղեն ծնունդք Հերովդի, կաքաւեաց
դուստրն Հերովդիայ ի մէջ բազմակա-
նին․ եւ հաճոյ թուեցաւ Հերովդի։
7 Ուստի եւ երդմամբ խոստացաւ տալ
8 նմա զինչ եւ խնդրեսցէ։ Եւ նա յա-
ռաջագոյն խրատեալ ի մօրէ իւրմէ,
Տո՛ւր ինձ, ասէ, այսր ի վերայ սկտեղ
9 զգլուխն Յովհաննու մկրտչի։ Եւ
տրտմեցաւ թագաւորն․ բայց վասն
երդմանցն եւ բազմականացն հրամայեաց
10 տալ նմա։ Եւ առաքեաց գլխատեաց
11 զՅովհաննէս ի բանտի։ Եւ բերաւ գլուխ
նորա սկտեղբ եւ տուաւ աղջկանն,
12 եւ տարաւ առ մայր իւր։ Եւ մա-
տուցեալ աշակերտքն նորա՝ բարձին
զմարմինն եւ թաղեցին, եւ եկեալ
պատմեցին Յիսուսի։
13 ԵԳ․ Եւ իբրեւ լուաւ Յիսուս, գնաց
անտի նաւու յանապատ տեղի առան-
ձինն․ իբրեւ լուան ժողովուրդքն,
գնացին զհետ նորա հետի ի քաղաքաց
14 անտի։ Եւ իբրեւ [3]ել, ետես ժողո-
վուրդ բազում, գթացաւ ի նոսա եւ
բժշկեաց զհիւանդս նոցա։
15 Իբրեւ ընդ երեկս եղեւ, մատեան
առ նա աշակերտքն եւ ասեն, Տեղիս
անապատ է եւ օրս տարաժամեալ,
արձակեա զժողովուրդս, զի երթիցեն
շուրջ ի շէնսն, գնեսցեն իւրեանց կե-
16 րակուրս։ Եւ ասէ Յիսուս, Ոչինչ
պիտոյ է դոցա երթալ, դուք տուք
17 դոցա ուտել։ Եւ նոքա ասեն ցնա,
Ոչինչ ունիմք աստ՝ բայց հինգ նկա-
18 նակ եւ երկու ձկունս։ Եւ ասէ
19 ցնոսա, Բերէք այսր զայն։ Եւ հրա-
մայեաց բազմեցուցանել զժողովուրդսն
ի վերայ խոտոյ․ եւ առեալ զհինգ

[1] Ի Յուն․ զպատուական   [2] Ոմանք, Յովսէփ

[3] Ոմանք, ել Յիսուս

նկանակն եւ զերկուս ձկունս՝ հայեցաւ
յերկինս, օրհնեաց եւ եբեկ, եւ ետ ցա-
շակերտսն զնկանակսն, եւ աշակերտքն՝
20 ժողովրդոցն։ Կերան ամենեքեան եւ
յագեցան, եւ բարձին զնշխարս կո-
21 տորոցն երկոտասան սակառի լի։ Եւ
որք կերանն՝ էին արք իբրեւ հինգ
հազար, թող զկանայս եւ զմանկտի։
22 ԵԴ. Եւ [1]ստիպեաց վաղվաղակի զա-
շակերտսն մտանել ի նաւ եւ յառաջել
յայնկոյս, մինչ ինքն զժողովուրդսն
23 արձակիցէ։ Եւ իբրեւ արձակեաց զժո-
ղովուրդսն, ել ի լեառն առանձինն կալ
յաղօթս, եւ իբրեւ ընդ երեկս եղեւ,
24 անդ էր միայն։ Եւ նաւն [2]մեկնեալ
էր ի ցամաքէն բազում ասպարիսօք՝՝
ծփեալ յալեացն. քանզի ընդդէմ էր
25 հողմն։ Եւ ի չորրորդում պահու գի-
շերոյն եկն առ նոսա Յիսուս գնալով
26 ի վերայ ծովուն։ Իբրեւ տեսին զնա
աշակերտքն զի գնայր ի վերայ ծովուն,
խռովեցան, եւ ասեն թէ Աչաւօք ինչ
27 իցէ. եւ առ ահին աղաղակեցին։ Եւ
վաղվաղակի խօսեցաւ ընդ նոսա Յի-
սուս եւ ասէ, Քաջալերեցարուք, ես
28 եմ, մի՛ երկնչիք։ Պատասխանի ետ
նմա Պետրոս եւ ասէ. Տէր, եթէ դու
ես, հրամայեա ինձ գալ առ քեզ ի վերայ
29 ջրոցս։ Եւ նա ասէ, Եկ։ Եւ իջեալ ի
նաւէն Պետրոս՝ գնայր ի վերայ [3]ջուրցն,
30 եւ եկն՝՝ առ Յիսուս։ Եւ տեսեալ
զհողմն սաստիկ՝ երկեաւ, եւ իբրեւ
սկսաւ ընկղմել, աղաղակեաց եւ ասէ,
31 Տէր, փրկեա զիս։ Եւ վաղվաղակի
Յիսուս ձգեաց զձեռն իւր, կալաւ զնա
եւ ասէ, Թերահաւատ, ընդէ՞ր երկ-
32 մտեցեր։ Եւ իբրեւ ելին ի նաւն, հան-
33 դարտեաց հողմն։ Եւ որ ի նաւուն էին՝
մատեան, երկիր պագին նմա եւ ասեն,
Արդարեւ Որդի Աստուծոյ ես դու։
34 Եւ անցեալ եկին ի ցամաք ի Գեննեսա-
35 րէթ։ Եւ իբրեւ ծանեան զնա արք
տեղւոյն այնորիկ, առաքեցին ընդ ա-
մենայն գաւառն, եւ ածին առ նա զա-
36 մենայն հիւանդս. Եւ աղաչէին զնա,
զի գոնէ միայն ի քղանցս հանդերձի
նորա մերձեսցին. եւ որ միանգամ
մերձեցանն՝ փրկեցան։

[1]Ոմանք, ստիպեաց Յիսուս
[2]Բազումք, էր ի մէջ ծովուն
[3]Ոմանք, ջուրցն, գալ
[4]Ոմանք, պատուիրեաց եւ ասէ

## ԳԼ. ԺԵ

1 ԵԵ. Յայնժամ մատեան առ Յիսուս
որ յԵրուսաղեմէ փարիսեցիքն եւ դը-
2 պիրք, եւ ասեն, Ընդէ՞ր աշակերտքն
քո անցանեն զաւանդութեամբ ծերոցն.
զի ոչ լուանան զձեռս յորժամ հաց
3 ուտեն։ Նա պատասխանի ետ եւ ասէ
ցնոսա, Իսկ դուք ընդէ՞ր անցանէք
զպատուիրանաւն Աստուծոյ վասն ձե-
4 րոյ աւանդութեանն։ Զի Աստուած
[4]ասաց, Պատուեա զհայր քո եւ զմայր.
5 Եւ, Որ բամբասէ զհայր կամ զմայր՝
6 մահու վախճանեսցի։ Եւ դուք ասէք,
Որ ասիցէ ցհայր իւր կամ ցմայր իւր
Թէ Պատարագ է զոր յինէն օգտիցիս,
եւ ոչ պատուիցէ զհայր իւր [5]եւ զմայր
իւր՝՝. եւ խոտէք զբանն Աստուծոյ
7 վասն ձերոյ աւանդութեանն։ Կեղծա-
ւորք, բարւոք մարգարէացաւ ի վերայ
8 ձեր Եսայի, եւ ասէ, Ժողովուրդս այս
[6]շրթամբք պատուէ զիս, եւ սիրտ
իւրեանց հեռացեալ մեկուսի է յինէն.
9 Զուր պաշտեն զիս, ուսուցանեն վար-
դապետութիւնս՝ զմարդկան պատ-
ուիրեալս։
10 Եւ կոչեցեալ առ ինքն զժողովուրդն՝
ասէ ցնոսա, Լուարուք եւ ի միտ ա-
11 ռէք. Ոչ որ ինչ մտանէ ընդ բերան՝
պղծէ զմարդ, այլ որ ինչ ելանէ ի բե-
րանոյ՝ այն պղծէ զմարդ։
12 Յայնժամ մատուցեալ աշակերտացն
նորա՝ ասեն ցնա, Գիտե՞ս, զի փարի-
սեցիքն իբրեւ լուան զբանն, գայ-
13 թակղեցին։ Նա պատասխանի ետ նո-
ցա եւ ասէ, Ամենայն տունկ զոր ոչ
տնկեաց Հայր իմ երկնաւոր՝ խլեսցի։
14 Թոյլ տուք զնոսա. [7]կոյրք են կուրաց
առաջնորդք՝՝. կոյր կուրի յորժամ ա-
ռաջնորդէ, [8]սխալէ եւ՝՝ երկոքին ի խոր-
15 խորատ անկանին։ Պատասխանի ետ
նմա Պետրոս եւ ասէ, Մեկնեա մեզ
16 զառակս զայս։ Ասէ Յիսուս, Տակաւին
17 եւ դո՞ւք անմիտք էք. Եւ ո՞չ իմանայք
եթէ ամենայն որ մտանէ ի բերան՝
յորովայն երթայ եւ արտաքս ելանէ։

[5]Յոմանս պակասէ
[6]Ոմանք, մերձ է առ իս բերանով իւրով, եւ շրթամբք
[7]Ոմանք, են առաջնորդք կոյրք
[8]Ի բազումս պակասէ

18 Իսկ որ ելանէ ի բերանոյ՝ ի սրտէ անտի
19 գայ, եւ այն պղծէ զմարդ ։ Զի ի սրտէ
ելանեն խորհուրդք չարք, սպանու-
թիւնք, շնութիւնք, պոռնկութիւնք,
գողութիւնք, սուտ վկայութիւնք,
20 հայհոյութիւնք ։ Այս ամենայն է որ
պղծէ զմարդ, այլ անլուայ ձեռօք ու-
տել ոչ պղծէ զմարդ ։
21 ԵԶ. Եւ ելեալ անտի Յիսուսի գնաց
22 ի կողմանս Տիւրոսի եւ Սիդոնի ։ Եւ
ահա կին մի Քանանացի ի սահմանաց
անտի նոցա ելեալ՝ աղաղակէր եւ
ասէր, Ողորմեաց ինձ, Տէր, որդի
Դաւթի, դուստր իմ չարաչար դիւա-
23 հարի ։ Եւ նա ոչ ետ նմա պատասխա-
նի. եւ մատուցեալ աշակերտքն նորա՝
աղաչէին զնա եւ ասէին, Արձակեա
24 զնա զի աղաղակէ զհետ մեր ։ Նա պա-
տասխանի ետ եւ ասէ, Ոչ ուրեք ա-
ռաքեցայ, եթէ ոչ առ ոչխարս կորու-
25 սեալս տանն Իսրայելի ։ Եւ նա մա-
տուցեալ երկիր պագանէր նմա եւ ա-
26 սէր, Տէր, օգնեա ինձ ։ Պատասխանի
ետ նմա եւ ասէ, Ոչ է բարւոք առնուլ
27 զհաց մանկանց եւ արկանել շանց ։ Եւ
նա ասէ, Այո, Տէր, քանզի եւ շունք
կերակրին ի փշրանաց անկելոց ի սե-
28 ղանոյ տեառն իւրեանց ։ Յայնժամ
պատասխանի ետ նմա Յիսուս եւ ասէ,
Ով կին դու, մեծ են հաւատք քո, ե-
ղիցի քեզ որպէս եւ կամիս. եւ բժշ-
կեցաւ դուստր նորա ի նմին ժամու ։
29 ԵԷ. Եւ գնացեալ անտի Յիսուսի,
եկն ի ծովեզրն Գալիլեացւոց, եւ ելեալ
30 ի լեառն նստէր անդ ։ Մատեան առ նա
ժողովուրդք բազումք որ ունէին ընդ
իւրեանս կաղս, կոյրս, համերս, միա-
կողմանիս եւ այլս բազումս. եւ ըն-
կեցին զնոսա առ ոտս [1]նորա, եւ բժշ-
31 կեաց զնոսա. Մինչեւ զարմանալ ժո-
ղովրդոցն որ տեսանէին, զի համերք
խօսէին, կաղք գնային, միակողմանիք
բժշկէին, կոյրք տեսանէին. եւ փա-
ռաւոր առնէին զԱստուած Իսրայելի ։
32 Եւ կոչեցեալ առ ինքն Յիսուսի զա-
շակերտսն ասէ, Գթամ ի ժողովուրդդ,
զի արդ երեք աւուրք են զի կան առ
իս, եւ ոչ ունին ինչ ուտիցեն. եւ
արձակել զդոսա նօթիս չկամիմ, գուցէ
33 նքթիցեն զճանապարհայն ։ Ասեն ցնա
աշակերտքն, Իսկ արդ մեզ յանապա-
տի աստ ուստի՞ իցէ այնչափ հաց՝ մինչ
յագեցուցանել զայսչափ ժողովուրդ ։
34 Եւ ասէ ցնոսա Յիսուս, Քանի՞ նկա-
նակ ունիք. եւ նոքա ասեն, Եւթն
35 եւ սակաւ ձկունս ։ Եւ հրամայեաց
ժողովրդեանն բազմել ի վերայ գետնոյ ։
36 Եւ առեալ զեւթն նկանակն եւ զձը-
կունսն՝ գոհացաւ եւ եբեկ եւ ետ ցա-
շակերտսն, եւ նոքա՝ ժողովրդեանն ։
37 Կերան ամենեքեան եւ յագեցան. եւ
բարձին զնշխարս կոտորոցն եւթն
38 զամբիղ լի ։ Եւ որք կերանն՝ էին
[2]իբրեւ արք չորք հազարք, թող զկա-
39 նայս եւ զմանկտի ։ Իբրեւ արձակեաց
զժողովուրդսն, ել ի նաւ եւ եկն ի
սահմանս Մագդաղեայ ։

Գլ. ԺԶ

1 Եւ մատուցեալ փարիսեցիքն եւ սա-
դուկեցիք, փորձելով խնդրէին ի նմա-
2 նէ նշան յերկնից ցուցանել նոցա ։ Նա
պատասխանի ետ եւ ասէ ցնոսա,[3]
4 Ազգ չար եւ շնացող նշան խնդրէ, եւ
նշան մի՛ տացի նմա, բայց նշանն
Յովնանու մարգարէի. եւ եթող զնո-
սա եւ գնաց ։
5 Գնացին եւ աշակերտքն յայնկոյս,
6 եւ մոռացան առնուլ հաց ։ Ասէ ցնոսա
Յիսուս, Տեսէք եւ զգոյշ լերուք ի
խմորոյ սադուկեցւոցն եւ փարիսեց-
7 ւոց ։ Նոքա խորհէին ընդ միմեանս
8 եւ ասէին թէ Հաց ոչ բարձաք ։ Գիտաց
Յիսուս եւ ասէ. Զի՞ խորհիք ի միտս
ձեր, թերահաւատք, եթէ հաց ոչ ու-
9 նիք ։ Տակաւին չիմանա՞յք եւ ո՞չ յիշէք
զհինգ նկանակն ի հինգ հազարսն, եւ
10 քանի՞ սակառի բարձէք. Եւ ո՞չ զեւթն
նկանակն ի չորս հազարսն, եւ քանի՞
11 զամբիղս բարձէք ։ Արդ զիա՞րդ ոչ ի-
մանայք եթէ ոչ վասն հացի ասացի
ձեզ զգոյշ լինել ի խմորոյ փարիսե-
12 ցւոցն եւ սադուկեցւոց ։ Յայնժամ
ի միտ առին, եթէ ոչ ասաց զգու-
շանալ [4]ի խմորոյ, այլ յաղանդոյ

[1] Ոմանք, Յիսուսի [2] Յոմանս պակասի

[3] Բազումք յաւելուն, Յորժամ երեկոյ լինի, ասէք թէ Ջեր լինելոց է, քանզի կարմրացեալ երկինք. (3) Եւ ընդ այգս՝ Այսօր ձմեռն, քանզի կարմրացեալ խոժոռեցեալ երկինք. զերեսս երկնից գիտէք քննել, եւ զնշանս ժամանակաց չկարէ՞ք ։
[4] Ոմանք, ի խմորոյ Հացի

փարիսեցւոցն եւ սադուկեցւոց։
13 ԺԳ. Եւ եկեալ Յիսուս ի կողմանս
Փիլիպպեայ Կեսարեայն՝ հարցանէր ցա-
շակերտսն եւ ասէր, Զո՞ ոք ասեն
զինէն մարդիկն թէ իցէ Որդի մարդոյ։
14 Եւ նոքա ասեն, Ոմն՝ զՅովհաննէս
Մկրտիչ, եւ այլք՝ զԵղիա, եւ կէսք՝
զԵրեմիա կամ զմի ոք ի մարգարէիցն։
15 Ասէ ցնոսա, Իսկ դուք զո՞ ոք ասէք
16 զինէն թէ իցեմ։ Պատասխանի ետ Սի-
մո՛ն Պետրոս եւ ասէ, Դու ես Քրիս-
17 տոսն, Որդի Աստուծոյ կենդանւոյ։ Պա-
տասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնա,
Երանի քեզ, Սիմո՛ն, որդի Յովնանու,
զի մարմին եւ արիւն ոչ յայտնեաց
18 քեզ, այլ՝ Հայր իմ որ յերկինս է։ Եւ ես
քեզ ասեմ, զի Դու ես վէմ, եւ ի վերայ
այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, եւ
դրունք դժոխոց զնա մի՛ յաղթահա-
19 րեսցեն։ Եւ տաց քեզ զփականս ար-
քայութեան երկնից. եւ զոր միանգամ
կապեսցես յերկրի՝ եղիցի կապեալ յեր-
կինս. եւ զոր արձակեսցես յերկրի՝
20 եղիցի արձակեալ յերկինս։ Յայնժամ
սաստեաց աշակերտացն, զի մի՛ ումեք
ասասցեն թէ նա է [1]Քրիստոսն։
21 Յայնմ հետէ սկսաւ Յիսուս ցուցա-
նել աշակերտացն թէ պարտ է նմա
երթալ յԵրուսաղէմ, եւ բազում չար-
չարանս չարչարել ի քահանայապետից
եւ ի դպրաց եւ ի ծերոց [2]ժողովրդեանն
եւ սպանանել, եւ յերիր աւուր յառնել։
22 Եւ առեալ զնա մեկուսի Պետրոսի՝
սկսաւ կալել ընդ նմա եւ ասել, Քաւ
լիցի քեզ, Տէր, մի՛ եղիցի քեզ այդ։
23 Եւ նա դարձեալ ի Պետրոս՝ ասէ, Երթ
յետս իմ, Սատանայ, գայթագղութիւն
իմ ես. զի ոչ խորհիս զԱստուծոյն,
այլ՝ զմարդկան։
24 Յայնժամ Յիսուս ասէ ցաշակերտսն
իւր, Եթէ ոք կամի զկնի իմ գալ, ու-
րասցի զանձն եւ առցէ զխաչ իւր եւ
25 եկեսցէ զկնի իմ։ Զի որ կամիցի զանձն
իւր կեցուցանել՝ կորուսցէ զնա. եւ
որ կորուսցէ զանձն իւր վասն իմ՝
26 գտցէ զնա։ Զի՞նչ օգտիցի մարդ եթէ
զաշխարհս ամենայն շահեսցի եւ զանձն
իւր տուժեսցի. կամ զի՞նչ տացէ մարդ
27 փրկանս ընդ անձին իւրոյ։ Զի գալոց է
Որդի մարդոյ փառօք Հօր իւրոյ հան-
դերձ հրեշտակօք իւրովք, եւ յայնժամ
հատուսցէ իւրաքանչիւր ըստ գործս
28 իւր։ Ամէն ասեմ ձեզ, զի իցեն ոմանք
ի սոցանէ որք աստ կան, որք ոչ ճա-
շակեսցեն զմահ, մինչեւ տեսցեն զՈրդի
մարդոյ եկեալ արքայութեամբ իւրով։

## ԳԼ. ԺԷ

1 Եւ յետ վեց աւուր առնու ընդ իւր
Յիսուս զՊետրոս եւ զՅակոբոս եւ
զՅովհաննէս եղբայր նորա, եւ հանէ
զնոսա ի լեառն մի բարձր առանձինն.
2 Եւ այլակերպեցաւ առաջի նոցա, եւ
լուսաւորեցան երեսք նորա իբրեւ զա-
րեգակն, եւ հանդերձք նորա եղեն
3 սպիտակ իբրեւ զլոյս։ Եւ ահա երեւե-
ցան նոցա Մովսէս եւ Եղիա որ խօ-
4 սէին ընդ նմա։ Պատասխանի ետ Պետ-
րոս եւ ասէ ցՅիսուս, Տէր, բարւոք
է մեզ աստ լինել. եթէ կամիս, արաս-
ցուք երիս տաղաւարս՝ մի քեզ եւ մի
5 Մովսիսի եւ մի Եղիայի։ Եւ մինչդեռ
նա խօսէր, ահա ամպ լուսաւոր հո-
վանի եղեւ ի վերայ նոցա. ձայն եղեւ
յամպոյն եւ ասէ, Դա է Որդի իմ սի-
րելի ընդ որ հաճեցայ, դմա լուարուք։
6 Իբրեւ լուան աշակերտքն, անկան ի
վերայ երեսաց իւրեանց եւ երկեան
7 յոյժ։ Եւ մատուցեալ Յիսուս բուռն
եհար զնոցանէ եւ ասէ, Յոտն կացէք
8 եւ մի՛ երկնչիք։ Ամբարձին զաչս
իւրեանց եւ ոչ զոք տեսին՝ բայց միայն
զՅիսուս։
9 Եւ մինչդեռ իջանէին ի լեռնէ անտի,
պատուիրեաց նոցա Յիսուս եւ ասէ,
Մի՛ ումեք ասիցէք զտեսիլդ, մինչեւ
10 Որդի մարդոյ ի մեռելոց յարիցէ։ Հար-
ցին զնա աշակերտքն եւ ասեն, Զի՞արդ
դպիրքն ասեն եթէ Եղիայի նախ պարտ
11 է գալ։ Պատասխանի ետ Յիսուս եւ
ասէ ցնոսա, Եղիա գայ եւ հաստա-
12 տեսցէ զամենայն։ Այլ ասեմ ձեզ, զի
Եղիա եկեալ իսկ է. եւ ոչ ծանեան
զնա, այլ արարին ընդ նա զոր ինչ
կամեցան, նոյնպէս եւ Որդի մարդոյ
13 չարչարելոց է ի նոցանէ։ Յայնժամ
ի միտ առին աշակերտքն թէ վասն
Յովհաննու Մկրտչի ասաց ցնոսա։
14 ԺԶ. Եւ իբրեւ եկին ի ժողովուրդն,
մատեաւ այր մի, ի ծունր իջանէր եւ
ասէր, Տէր, ողորմեաց որդւոյ իմում,

[1]Ոմանք. Յիսուս Քրիստոս [2]Ի ժողովրդեան պակասէ

գի լուսնոտի եւ չարաչար հիւանդա-
նայ, բազում անգամ անկանի ի հուր
15 եւ [1]երբեմն ի ջուր։ Եւ մատուցի զնա
աշակերտացդ քոց, եւ ոչ կարացին
16 բժշկել։ Պատասխանի ետ Յիսուս եւ
ասէ, Ով ազգ անհաւատ եւ թիւր,
մինչեւ ցե՞րբ իցեմ ընդ ձեզ, մինչեւ
յե՞րբ անսայցեմ ձեզ. [2]ած զնա առ իս։
17 Եւ սաստեաց ի նա Յիսուս, եւ ել
ի նմանէ դեւն, եւ բժշկեցաւ մանուկն
18 ի ժամէն յայնմանէ։ Յայնժամ մատեան
աշակերտքն առանձինն եւ ասեն ցՅի-
սուս, Մեք ընդէ՞ր ոչ կարացաք հանել
19 զնա։ Եւ նա ասէ ցնոսա, Վասն թե-
րահաւատութեան ձերոյ. ամէն ասեմ
ձեզ, Եթէ ունիցիք հաւատս քան զհատ
մանանխոյ, ասասջիք լերինս այսմիկ,
Փոխեաց աստի անդր, եւ փոխեսցի.
20 եւ ոչ ինչ անհնարին լինիցի ձեզ։ Բայց
այս ազգ ոչ ելանէ, եթէ ոչ աղօթիւք
եւ պահովք։
21 ԶԳ. Եւ մինչդեռ շրջէին նոքա ի Գա-
լիլեա, ասէ ցնոսա Յիսուս, Մատնելոց
22 է Որդի մարդոյ ի ձեռս մարդկան, Եւ
սպանցեն զնա, եւ յերիր աւուր յա-
րիցէ. եւ տրտմեցան յոյժ։
23 Իբրեւ եկին նոքա ի Կափառնայում,
մատեան որք զերկդրամեանն պահան-
ջէին՝ առ Պետրոս, եւ ասեն, Վարդա-
պետն ձեր ո՞չ տայ զերկդրամեանն. եւ
24 ասէ, Այո։ Եւ իբրեւ եմուտ ի տուն,
յառաջեաց քան զնա Յիսուս եւ ասէ,
Զի՞րդ թուի քեզ, Սիմովն, թագա-
ւորք [3]ազգաց յումմէ՞ առնուն զհարկս
կամ զհաս, յորդւո՞ց իւրեանց՝ թէ
25 յօտարաց։ Եւ իբրեւ ասաց թէ Յօտա-
րաց, ասէ ցնա Յիսուս, Ապա ուրեմն
26 ազատ են որդիքն։ Բայց զի մի՛ գայ-
թակղեցուսցուք զնոսա, երթ ի ծով
եւ ընկեա կարթ, եւ զառաջին ձուկնն
որ ելանիցէ՝ առ եւ բաց զբերան նորա,
եւ գտանիցես սատեր. եւ զայն առեալ
տացես նոցա ընդ իմ եւ ընդ քո։

## ԳԼ. ԺԸ

1 Յայնմ աւուր մատեան աշակերտքն
առ Յիսուս եւ ասեն, Ո՞վ իցէ [4]ի մէնջ
2 մեծ յարքայութեան երկնից։ Եւ կոչ-
եաց առ ինքն Յիսուս մանուկ մի,
3 կացոյց զնա ի մէջ նոցա, Եւ ասէ,
Ամէն ասեմ ձեզ, Եթէ ոչ դարձջիք
եւ լինիջիք իբրեւ զմանկունս, ոչ մտա-
4 նիցէք յարքայութիւն երկնից։ Արդ
որ խոնարհեցուսցէ զանձն իբրեւ
զմանուկս զայս՝ նա է մեծ յարքայու-
5 թեան երկնից։ Եւ որ ոք ընկալցի
մանուկ մի այսպիսի յանուն իմ՝ զիս
6 ընդունի։ Եւ որ ոք գայթակղեցուսցէ
զմի ի փոքրկանցս յայսցանէ յիս հա-
ւատացելոց՝ լաւ է նմա եթէ կախիցի
երկան իշոյ ընդ պարանոց նորա, եւ
7 ընկղմիցի ի խորս ծովու։ Վա՜յ աշ-
խարհի ի գայթակղութեանց. հարկ է,
գալ գայթակղութեանց, բայց վա՜յ մար-
դոյն այնմիկ յոյր ձեռն գայցէ գայ-
8 թակղութիւն։ Եթէ ձեռն քո կամ ոտն
գայթակղեցուցանէ զքեզ, հատ զնա
եւ ընկեա ի քէն. լաւ իցէ քեզ միա-
ձեռանի կամ կաղ մտանել ի կեանս,
քան երկուս ձեռս եւ երկուս ոտս
ունել, եւ անկանել ի հուրն յաւիտե-
9 նական։ Եւ եթէ ակն քո գայթակղե-
ցուցանէ զքեզ, խլեա զնա եւ ընկեա
ի քէն. լաւ իցէ քեզ միականի մտանել
ի կեանս, քան երկուս աչս ունել եւ
անկանել ի գեհեն հրոյն։
10 ԶԳ. Զգոյշ լերուք, մի՛ արհամարհի-
ցէք զմի ի փոքրկանցս յայսցանէ. ասեմ
ձեզ, զի հրեշտակք նոցա յերկինս հա-
նապազ տեսանեն զերեսս Հօր իմոյ
11 որ յերկինս է։ Զի եկն Որդի մարդոյ
կեցուցանել զկորուսեալն։
12 Զի՞րդ թուի ձեզ. եթէ լինիցի
մարդոյ հարեւր ոչխար եւ մոլորիցի
մի ի նոցանէ, ո՞չ թողուցու զիննսուն
եւ զինն ոչխարն ի լերինս, եւ երթի-
13 ցէ խնդրիցէ զմոլորեալն։ Եւ եթէ լի-
նիցի գտանել զնա, ամէն ասեմ ձեզ,
զի ուրախ լինի ի վերայ նորա առա-
ւել քան ի վերայ իննսուն եւ իննուցն
14 որ չիցեն մոլորեալ։ Այսպէս ոչ են
կամք առաջի Հօր [5]իմոյ որ յերկինս
է, եթէ կորիցէ մի ի փոքրկանցս յայս-
ցանէ։
15 Եթէ մեղիցէ քեզ եղբայր քո, երթ
յանդիմանեա զնա, յորժամ դու եւ նա
միայն իցէք. եթէ լուիցէ քեզ, շահե-
16 ցար զեղբայրն քո։ Ապա թէ ոչ լուիցէ

[1]Բազումք, բազում անգամ
[2]Յոյնն, ածէք   [3]Յոյնն, երկրի
[4]Ի Յունին պակասէ   [5]Ոմանք, ձերոյ

քեզ, առ ընդ քեզ մեւս եւս կամ եր-
կուս, զի ի բերանոյ երկուց եւ երից
վկայից հաստատեսցի ամենայն բան։
17 Իսկ եթէ եւ նոցա ոչ լուիցէ, ասասջիր
[1]յեկեղեցւոջ. ապա թէ եւ եկեղեցւոյն
ոչ լուիցէ, եղիցի քեզ իբրեւ զհեթա-
նոսն եւ զմաքսաւոր։
18 Ամէն ասեմ ձեզ, Զոր կապիցէք
յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս, եւ
զոր արձակիցէք յերկրի՝ եղիցի ար-
19 ձակեալ յերկինս։ Դարձեալ ասեմ ձեզ,
Եթէ երկու ի ձէնջ միաբանիցեն յերկրի
վասն ամենայն իրաց, զինչ եւ խնդ-
րեսցեն՝ եղիցի նոցա ի Հօրէ իմմէ որ
20 յերկինսն է։ Զի ուր իցեն երկու կամ
երեք ժողովեալ յանուն իմ, անդ եմ
ես ի մէջ նոցա։
21 Յայնժամ մատուցեալ առ նա Պետրոս
եւ ասէ, Տէր, քանի՞ցս անգամ թէ
մեղիցէ ինձ եղբայր իմ եւ թողից նմա,
22 մինչեւ յե՞օթն անգամ։ Ասէ ցնա Յի-
սուս, Ոչ ասեմ քեզ թէ մինչեւ յեօթն
անգամ, այլ մինչեւ յեօթանասնեկին
23 եօթն։ Վասն այսորիկ նմանեցաւ ար-
քայութիւն երկնից առն թագաւորի
որ կամեցաւ համար առնուլ ի մէջ ծա-
24 ռայից իւրոց։ Եւ իբրեւ սկսաւ առ-
նուլ, մատուցաւ առ նա պարտապան
25 մի բեւր քանքարոյ։ Իբրեւ ոչ ունէր
հատուցանել, հրամայեաց զնա վաճա-
ռել տէրն նորա, եւ զկին նորա եւ
զորդիս եւ զամենայն որ ինչ եւ ու-
26 նիցի, եւ հատուցանել։ Եւ անկեալ
ծառայն երկիր պագանէր նմա եւ ասէր,
[2]Երկայնամիտ լեր առ իս, եւ զամե-
27 նայն հատուցից քեզ։ Գթացեալ տէր
ծառային այնորիկ արձակեաց զնա,
28 եւ զփոխն եթող նմա։ Եւ ելեալ ծա-
ռայն այն եգիտ զմի ի ծառայակցաց
իւրոց որ պարտէր նմա հարեւր դա-
հեկան. եւ կալեալ զնա խեղդէր եւ
29 ասէր, Հատո ինձ զոր պարտիսդ։ Արդ
անկեալ ծառայակցին առ ոտս նորա,
աղաչէր զնա եւ ասէր, Երկայնամիտ
30 լեր առ իս, եւ [3]հատուցից քեզ։ Եւ նա
ոչ կամէր, այլ չոգաւ, արկ զնա ի
բանտ մինչեւ հատուսցէ զպարտսն։
31 Իբրեւ տեսին ծառայակիցքն նորա որ
ինչ եղեւն՝ տրտմեցան յոյժ, եւ եկեալ
յուցին տեառն իւրեանց զամենայն որ
32 ինչ եղեւն։ Յայնժամ կոչեաց զնա
տէրն իւր եւ ասէ, Ծառայ չար, զա-
մենայն զպարտսն թողի քեզ, վասն զի
33 աղաչեցեր զիս։ Իսկ արդ ո՞չ էր պարտ
եւ քեզ ողորմել ծառայակցին քում,
34 որպէս եւ ես քեզ ողորմեցայ։ Եւ բար-
կացեալ տէրն նորա՝ մատնեաց զնա
դահճաց, մինչեւ հատուսցէ զամենայն
35 զպարտսն։ Նոյնպէս եւ Հայր իմ որ
յերկինս է՝ արասցէ ձեզ, եթէ ոչ թո-
ղուցուք իւրաքանչիւր եղբօր իւրում
ի սրտից ձերոց զյանցանս նոցա։

## ԳԼ. ԺԹ

1 ՉԵ. Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յի-
սուս զբանս զայսոսիկ, փոխեցաւ ի
Գալիլեէ եւ եկն ի սահմանս Հրէաս-
2 տանի յայնկոյս Յորդանանու։ Եւ զը-
նացին զհետ նորա ժողովուրդք բա-
3 զումք, եւ բժշկեաց զնոսա անդ։ Եւ
մատուցեալ առ նա փարիսեցիքն փոր-
ձէին զնա, եւ ասէին եթէ Արժա՞ն
իցէ ումեք արձակել զկին իւր ըստ
4 ամենայն վնասու։ Պատասխանի ետ
նոցա եւ ասէ, Չիցէ՞ ընթերցեալ ձեր
թէ՝ որ հաստատեաց ի սկզբանէ՝ արու
5 եւ էգ արար զնոսա, եւ ասէ, Վասն
այսորիկ թողցէ այր զհայր եւ զմայր՝
եւ երթիցէ զհետ կնոջ իւրոյ, եւ ե-
6 ղիցին երկոքեան ի մարմին մի։ Ապա
ուրեմն ոչ են երկու, այլ՝ մի մարմին.
արդ զոր Աստուած զուգեաց՝ մարդ
7 մի՛ մեկնեսցէ։ Ասեն ցնա, Իսկ Մով-
սէս ընդէ՞ր պատուիրեաց մեզ տալ
8 թուղթ մեկնելոյ եւ արձակել։ Ասէ
ցնոսա, Մովսէս վասն խստասրտու-
թեան ձերոյ հրամայեաց ձեզ արձակել
զկանայս ձեր, այլ ի սկզբանէ ոչ եղեւ
9 այնպէս։ Բայց ասեմ ձեզ, զի Ամենայն
որ արձակէ զկին իւր, եւ ոչ վասն
պոռնկութեան, եւ առնիցէ այլ՝ շնայ.
10 եւ որ զարձակեալն առնէ՝ շնայ։ Ասեն
ցնա աշակերտքն իւր, Եթէ այդպէս
ինչ վնաս իցէ ընդ այր եւ ընդ կին,
11 լաւ է չամուսնանալ։ Եւ նա ասէ
ցնոսա, Ոչ ամենեքեան բաւական են
12 այդմ բանի, այլ որոց տուեալ է։ Զի են
ներքինիք որ յորովայնէ մօր իւրեանց

[1]Յօյնն, եկեղեցւոյն
[2]Ոմանք, Տէր, երկայնամիտ
[3]Ոմանք, զամենայն հատուցից

ծնան այնպէս․ եւ են ներքինիք որ
ի մարդկանէ եղեն ներքինիք․ եւ են
ներքինիք որ զանձինս իւրեանց ա-
րարին ներքինիս վասն արքայութեան
երկնից․ որ կարողն է առնել՝ առցէ։
13 Յայնժամ մատուցան առ նա մանկտի,
զի ձեռն դիցէ ի վերայ նոցա եւ ա-
ղօթս արասցէ․ եւ աշակերտքն նոցա
14 սաստէին նոցա։ Ասէ Յիսուս, Թոյլ
տուք մանկտւոյդ եւ մի՛ արգելուք
զդոսա գալ առ իս, զի այդպիսեացդ է
15 արքայութիւն երկնից։ Եւ եդեալ ձեռս
ի վերայ նոցա՝ գնաց անտի։
16 ՁԶ․ Եւ ահա մատուցեալ ոմն առ
նա՝ ասէ, Վարդապետ բարի, զի՞նչ բա-
րի գործեցից զի ընդունիցիմ զկեանսն
17 յաւիտենականս։ Եւ նա ասէ ցնա,
Զի՞ [1]հարցանես զիս զբարւոյ, մի է
բարի"․ եթէ կամիս [2]ի կեանսն յաւի-
տենականս մտանել", պահեա զպատ-
18 ուիրանսն։ Ասէ ցնա, Զո՞րս․ ասէ
ցնա Յիսուս, ԶՄի՛ սպանաներն, եւ
19 Մի՛ շնար, եւ Մի՛ գողանար, Եւ Մի՛
սուտ վկայեր, Պատուեա զհայր քո եւ
զմայր, եւ Սիրեսցես զընկեր քո իբրեւ
20 զանձն քո։ Ասէ ցնա պատանին, Զայդ
ամենայն պահեցի ի մանկութենէ իմմէ․
21 արդ ի՞ւ իւիք պակաս իցեմ։ Ասէ ցնա
Յիսուս, Եթէ կամիս կատարեալ լինել,
երթ վաճառեա զինչս քո եւ տուր
աղքատաց․ եւ ունիցիս գանձս յեր-
22 կինս, եւ եկ զկնի իմ։ Իբրեւ լուաւ
պատանին զբանն, գնաց տրտմեալ, զի
23 ունէր ստացուածս բազումս։ Ասէ Յի-
սուս ցաշակերտսն, Ամէն ասեմ ձեզ
զի դժուարաւ մտցէ մեծատուն յար-
24 քայութիւն երկնից։ Դարձեալ ասեմ
ձեզ, Դիւրին է մալխոյ մտանել ընդ
ծակ ասղան, քան մեծատան յար-
25 քայութիւն Աստուծոյ մտանել։ Իբրեւ
լուան աշակերտքն, զարմացան յոյժ
եւ ասեն, Իսկ ո՞ կարիցէ ապրել։
26 Հայեցաւ ի նոսա Յիսուս եւ ասէ, Առ
ի մարդկանէ այդ անկար է, այլ առ
յԱստուծոյ՝ ամենայն ինչ զօրաւոր։
27 Յայնժամ պատասխանի ետ Պետրոս
եւ ասէ ցնա, Ահաւասիկ մեք թողաք
զամենայն եւ եկաք զկնի քո, արդ
28 զի՞նչ լինիցի մեզ։ Ասէ ցնոսա Յիսուս,
Ամէն ասեմ ձեզ զի դուք որ եկիք
զկնի իմ, [3]ի միւսանգամ գալստեանն",
յորժամ նստցի Որդի մարդոյ յաթոռ
փառաց իւրոց, նստջիք եւ դուք յեր-
կոտասան աթոռ՝ դատել զերկոտասան
29 ազգն Իսրայելի։ Եւ ամենայն որ ոք
եթող զտուն կամ զեղբարս կամ զքորս
կամ զհայր կամ զմայր կամ զկին կամ
զորդիս կամ զագարակս վասն ան-
ուան իմոյ՝ հարիւրապատիկ առցէ, եւ
զկեանսն յաւիտենականս ժառանգես-
30 ցէ։ Բազումք եղիցին առաջինք յե-
տինք, եւ յետինք՝ առաջինք։

## ԳԼ․ Ի

1 Քանզի նման է արքայութիւն երկնից
առն տանուտեառն, որ ել ընդ առա-
ւօտս ի վարձու ունել մշակս յայգի
2 իւր։ Եւ արկ վարձս մշակացն աւուրն
դահեկան, եւ առաքեաց զնոսա յայգի
3 իւր։ Եւ ելեալ զերրորդ ժամու՝ եւես
այլս զի կային դատարկք ի հրապա-
4 րակս։ Ասէ եւ ցնոսա, Երթայք եւ
դուք յայգի իմ, եւ որ ինչ արժան
5 իցէ՝ տաց ձեզ։ Գնացին եւ նոքա․ եւ
դարձեալ ելեալ զվեց ժամու եւ զինն
6 ժամու՝ արար նոյնպէս։ Եւ զմետա-
սաներորդ ժամու ելեալ եգիտ այլս
զի կային դատարկք․ ասէ եւ ցնոսա,
Ընդէ՞ր կայք աստ զօրս ցերեկ դա-
7 տարկք։ Ասեն ցնա, Զի ոչ ոք կալաւ
զմեզ ի վարձու․ ասէ ցնոսա, Երթայք
եւ դուք յայգին, եւ որ ինչ արժան է՝
8 առնուցուք։ Եւ իբրեւ երեկոյ եղեւ,
ասէ տէր այգւոյն ցգործակալս իւր,
Կոչեա զմշակսն եւ տուր նոցա վարձ՝
սկսեալ ի յետնոցն մինչեւ ցառաջինսն։
9 Իբրեւ եկին որք զմետասաներորդ ժա-
10 մուն՝ առին մէն մի դահեկան։ Եկեալ
եւ առաջինքն՝ համարէին թէ աւելի
առնուցուն, եւ առին մէն մի դահե-
11 կան եւ նոքա։ Իբրեւ առին, տրտնջէ-
ին զտանուտեառնէն եւ ասէին թէ
12 Դոքա յետինքդ մի ժամ գործեցին,
եւ հաւասարակիցս մեզ արարեր զդոսա,
որ զծանրութիւն աւուրն բարձաք եւ
13 զտօթ։ Նա պատասխանի ետ միում
ի նոցանէ եւ ասէ, Ընկեր, չզրկեմ
զքեզ, ո՞չ դահեկանի միոջ սակ արկեր

[1]Ոմն․, ասես զիս բարի, չիք ոք բարի բայց մի, Աստուած  [2]Յ․․, ի կեանս մտանել

[3]Յ․․, ի վերստին ծննդեան

14 ընդ իս. Առ զքոյդ եւ երթ, եթէ
կամիմ յետնոցս տալ՝ որպէս եւ քեզ։
15 Եթէ չիցէ՞ ինձ իշխանութիւն յիմս
առնել զինչ եւ կամիմ. կամ թէ ակն
16 քո չա՞ր է, զի ես առատ եմ։ Այսպէս
եղիցին յետինք առաջինք, եւ առա-
ջինք՝ յետինք. զի բազումք են կոչեց-
եալք, եւ սակաւք են ընտրեալք։
17 ՁԷ. Իբրեւ ելանէր Յիսուս յԵրուսա-
ղէմ, առ [1]զերկոտասանսն առանձինն,
18 եւ ի ճանապարհին ասէ ցնոսա, Ահա-
ւասիկ ելանեմք յԵրուսաղէմ, եւ Որդի
մարդոյ մատնեսցի քահանայապետիցն
եւ դպրաց, եւ դատապարտեսցեն զնա
19 ի մահ. Եւ մատնեսցեն զնա հեթանո-
սաց՝ այպանել եւ հարկանել եւ ի խաչ
հանել, եւ յերիր աւուր յարիցէ։
20 Յայնժամ մատեաւ առ նա մայր
որդւոցն Զեբեդեայ որդւովք իւրովք
հանդերձ, երկիր պագանէր եւ խնդրէր
21 ինչ ի նմանէ։ Եւ նա ասէ ցնա, Զի՞նչ
կամիս. ասէ ցնա, Ասա զի նստցին
սոքա երկու որդիքս իմ, մի ընդ աջմէ
քումմէ եւ մի ընդ ահեկէ, յարքայու-
22 թեան քում։ Պատասխանի ետ Յիսուս
եւ ասէ, Ոչ գիտէք զինչ խնդրէք.
կարէ՞ք ըմպել զբաժակն զոր ես ըմ-
պելոց եմ. [2]կամ զմկրտութիւնն զոր
ես մկրտելոց եմ՝ մկրտել." ասեն ցնա,
23 Կարող եմք։ Ասէ ցնոսա [2]Յիսուս,
Զբաժակն իմ ըմպիցէք, [2]եւ զմկրտու-
թիւնն զոր ես մկրտելոց եմ՝ մկրտի-
ջիք," բայց [3]նստուցանել ընդ աջմէ
եւ ընդ ահեկէ իմմէ՝ ոչ է իմ տալ, այլ
24 որոց [4]տուեալ է ի Հօրէ իմմէ։ Եւ
լուեալ տասանցն՝ բարկացան ի վերայ
25 երկուցն եղբարց։ Յիսուս կոչեաց զնո-
սա առ ինքն եւ ասէ, Գիտէք զի իշ-
խանք ազգաց տիրեն նոցա, եւ մեծա-
26 մեծքն իշխեն նոցա։ Ոչ այնպէս իցէ
եւ ի ձերում միջի. այլ որ կամիցի
ի ձէնջ մեծ լինել՝ եղիցի ձեր պաշ-
27 տօնեայ. Եւ որ կամիցի ի ձէնջ առա-
28 ջին լինել՝ եղիցի ձեր ծառայ։ Որպէս
Որդի մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ,
այլ պաշտել, եւ տալ զանձն իւր
փրկանս փոխանակ բազմաց։
29 ԵԿ. Եւ յելանելն նոցա յԵրիքովէ,
գնացին զհետ նորա ժողովուրդք բա-
30 զումք։ Եւ ահա կոյրք երկու նստէին
առ ճանապարհաւն. իբրեւ լուան թէ
Յիսուս անցանէ, աղաղակեցին եւ
ասեն, Ողորմեաց մեզ, [5]Յիսուս, Որդի
31 Դաւթի։ Եւ ամբոխն սաստեաց նոցա
զի լռեսցեն. եւ նոքա եւս առաւել ա-
ղաղակէին եւ ասէին, Տէր, ողորմեաց
32 մեզ, Որդի Դաւթի։ Զտեղի առ Յի-
սուս, կոչեաց զնոսա եւ ասէ, Զի՞նչ
33 կամիք զի արարից ձեզ։ Ասեն ցնա,
34 Տէր, զի բացցին աչք մեր։ Եւ գթա-
ցեալ Յիսուս մերձեցաւ յաչս նոցա,
եւ վաղվաղակի տեսին եւ գնացին
զհետ նորա։

## ԳԼ. ԻԱ

1 Իբրեւ մօտ եղեն յԵրուսաղէմ եւ եկին
ի Բեթփագէ մերձ ի լեառն Ձիթենեաց,
յայնժամ Յիսուս արձակեաց երկուս
2 յաշակերտացն իւրոց։ Եւ ասէ ցնոսա,
Երթայք ի գեւղ որ առաջի ձեր է, եւ
անդէն գտանիցէք էշ կապեալ եւ յա-
ւանակ ընդ նմին. լուծէք, ածէք ինձ։
3 Եւ եթէ ոք ասիցէ ինչ ձեզ, ասասջիք
եթէ Տեառն իւրեանց պիտոյ են. եւ
4 վաղվաղակի առաքեսցէ զնոսա։ Բայց
այս ամենայն եղեւ զի լցցի բան մար-
5 գարէին որ ասէ, Ասացէք դստեր Սի-
ոնի, Ահա թագաւոր քո գայ քեզ հեզ,
եւ հեծեալ յէշ եւ յաւանակի իշոյ։
6 Գնացին աշակերտքն, եւ արարին որ-
7 պէս հրամայեաց նոցա Յիսուս։ Եւ
ածին զէշն եւ զյաւանակն, եւ արկին
ի նոքօք [6]ձորձս. եւ նստաւ ի վերայ
8 նոցա։ Եւ բազում ժողովուրդք տա-
րածեցին զհանդերձս իւրեանց ի ճա-
նապարհին, եւ այլք հատանէին ոստս
ի ծառոց եւ տարածանէին ի ճանա-
9 պարհին։ Եւ ժողովուրդքն որ առաջին
եւ զկնի երթային՝ աղաղակէին եւ ա-
սէին, [7]Օրհնութիւն Որդւոյ Դաւթի,
օրհնեալ որ գայ յանուն Տեառն. [7]Օրհ-
նութիւն ի բարձունս։
10 Եւ ի մտանելն նորա յԵրուսաղէմ,
դղրդեցաւ քաղաքն ամենայն, եւ ասէ,
11 Ո՞վ իցէ սա։ Եւ ժողովուրդքն ասեն,
Սա է մարգարէն Յիսուս որ ի Նազա-
րեթէ Գալիլեացւոց։

[1] Բազումք+, զերկոտասան աշակերտսն
[2] Յոմանս պակաս
[3] Յոմն, նստել
[4] Յոմն, պատրաստեալ
[5] Բազումք+, Տէր
[6] Ոմանք+, զձորձս իւրեանց
[7] Յոմն, Ովսաննա

12 Եւ եմուտ Յիսուս [1]ի տաճարն եւ
եհան արտաքս զամենեսին որ վաճա-
ռէին եւ գնէին ի տաճարի անդ. եւ
զսեղանս հատավաճառացն կործանեաց
13 եւ զաթոռս աղաւնեվաճառացն. Եւ
ասէ ցնոսա, Գրեալ է, Տուն իմ տուն
աղօթից կոչեսցի, եւ դուք արարէք
զդա այրս աւազակաց։
14 Եւ մատեան առ նա կոյրք եւ կաղք
15 ի տաճարին, եւ բժշկեաց զնոսա։ Իբրեւ
տեսին քահանայապետքն եւ դպիրք
զսքանչելիսն զոր արար, եւ զմանկտին
որ աղաղակէին ի տաճարին եւ ասէին,
[2]Օրհնութիւն Որդւոյ Դաւթի, բար-
16 կացան. Եւ ասեն ցնա, Լսե՞ս զինչ
ասեն դոքա. ասէ ցնոսա Յիսուս, Այո,
չիցէ՞ ընթերցեալ ձեր թէ ի բերանոյ
տղայոց եւ ստնդիացաց կատարեցեր
17 զօրհնութիւն։ Եւ թողեալ զնոսա ել
արտաքոյ քաղաքին ի Բեթանիա, եւ
անդ ագաւ։
18 ԷԲ. Եւ այգուցն իբրեւ դարձաւ անդ-
19 րէն ի քաղաքն, քաղցեաւ։ Եւ տե-
սեալ թզենի մի ի վերայ ճանապարհին՝
եկն ի նա, եւ ոչինչ եգիտ ի նմա,
բայց միայն տերեւ. եւ ասէ ցնա, Մի՛
այսուհետեւ ի քէն պտուղ եղիցի յա-
ւիտեան. եւ առժամայն չորացաւ
20 թզենին։ Իբրեւ տեսին աշակերտքն,
զարմացան եւ ասեն թէ, Զիա՞րդ վաղ-
21 վաղակի ցամաքեցաւ թզենին։ Պա-
տասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնոսա,
Ամէն ասեմ ձեզ, Եթէ ունիցիք հա-
ւատս եւ ոչ երկմտիցէք, ոչ միայն
զթզենւոյդ առնիցէք, այլ թէպէտ եւ
լերինդ ասիցէք, Բարձիր եւ անկիր
22 ի ծով, եղիցի։ Եւ զամենայն ինչ զոր
եւ խնդրիցէք յաղօթս հաւատովք՝ առ-
նուցուք։
23 Եւ իբրեւ եկն ի տաճարն, մատեան
առ նա, մինչդեռ ուսուցանէր, քահա-
նայապետքն եւ ծերք ժողովրդեանն
եւ ասեն, Որո՞վ իշխանութեամբ առ-
նես զայդ, եւ ո՞վ ետ քեզ զիշխանու-
24 թիւնդ զայդ։ Պատասխանի ետ Յիսուս
եւ ասէ ցնոսա, Հարցից եւ ես զձեզ
բան մի, զոր թէ ասիցէք ինձ, եւ ես
ձեզ ասացից որո՛վ իշխանութեամբ
25 առնեմ զայս։ Մկրտութիւնն Յովհան-
նու ուստի՞ էր, յերկնի՞ց թէ ի մարդ-
կանէ. եւ նոքա խորհէին [3]ընդ մի-
26 մեանս" եւ ասէին, Եթէ ասեմք, Յերկ-
նից, ասէ ցմեզ, Իսկ ընդէ՞ր ոչ հա-
ւատացէք նմա. եւ եթէ ասեմք, ի
մարդկանէ, երկնչիմք ի ժողովրդե-
նէն, զի ամենեքին զՅովհաննէս իբրեւ
27 զմարգարէ ունէին։ Պատասխանի ե-
տուն Յիսուսի եւ ասեն, Ոչ գիտեմք.
ասէ ցնոսա եւ նա, Եւ ոչ ես ասեմ
ձեզ որով իշխանութեամբ առնեմ զայս։
28 Բայց զիա՞րդ թուի ձեզ. այր միոջ
էին երկու որդիք, եւ մատուցեալ առ
առաջինն ասէ, Որդեակ, երթ այսօր,
29 գործեա յայգւոջ։ Նա պատասխանի
ետ եւ ասէ, [4]Երթամ, տէր. եւ ոչ
30 չոգաւ"։ Մատեաւ եւ առ միւսն, եւ
ասէ նոյնպէս. նա պատասխանի ետ
եւ ասէ, [5]Ոչ կամիմ. բայց յետոյ զղջա-
31 ցաւ եւ չոգաւ յայգին"։ Ո՞վ ոք յեր-
կոցունց արար զկամս հօրն. ասեն,
[6]Յետինն. ասէ ցնոսա Յիսուս, Ամէն
ասեմ ձեզ, զի մաքսաւորք եւ պոռ-
նիկք յառաջեսցեն քան զձեզ յարքա-
32 յութիւն Աստուծոյ։ Զի եկն Յովհան-
նէս ճանապարհաւ արդարութեան, եւ
ոչ հաւատացէք նմա. եւ մաքսաւորք
եւ պոռնիկք հաւատացին նմա, եւ
դուք տեսէք, եւ ոչ զղջացարուք յետոյ
հաւատալ նմա։
33 ԷԳ. Այլ առակ լուարուք. Այր մի
էր տանուտէր որ տնկեաց այգի եւ
ցանկով պատեաց զնա, եւ փորեաց
ի նմա հնձան եւ շինեաց աշտարակ.
եւ ետ զնա ցմշակս, եւ գնաց ի տար-
34 աշխարհ։ Իբրեւ մերձեցաւ ժամանակ
պտղոյ, առաքեաց զծառայս իւր առ
35 մշակսն՝ առնուլ զպտուղս նորա։ Եւ
կալեալ մշակացն զծառայս նորա, զոմն
տանջեցին, զոմն սպանին, զոմն քար-
36 կոծեցին։ Դարձեալ առաքեաց այլ ծա-
ռայս բազումս քան զառաջինսն, եւ
37 արարին նոցա նոյնպէս։ Յետոյ ա-
ռաքեաց առ նոսա զորդի իւր, եւ ասէ,
Թերեւս ամաչեսցեն յորդւոյ աստի
38 իմմէ։ Իսկ մշակքն իբրեւ տեսին զոր-
դին, ասեն ընդ միտս, Սա է ժառանգն,
եկայք սպանցուք զսա եւ կալցուք

---

[1]Ոմն., ի տաճարն Աստուծոյ
[2]Յոյն., Ովսաննա [3]Եւմ., ընդ միտս

[4]Բազում., Ոչ կամիմ բայց յետոյ զղջացաւ եւ չոգաւ
[5]Բազում., Երթամ, տէր. եւ ոչ չոգաւ
[6]Բազում., Առաջինն

39 զժառանգութիւն նորա։ Եւ առեալ
հանին զնա արտաքոյ քան զայգին եւ
40 սպանին։ Արդ յորժամ եկեսցէ տէր
այգւոյն, զի՞նչ արասցէ մշակացն այ-
41 նոցիկ։ Ասեն ցնա, Զչարսն չարաչար
կորուսցէ, եւ զայգին տացէ այլոց
մշակաց, որք տացեն նմա զպտուղս
42 ի ժամու իւրեանց։ Ասէ ցնոսա Յի-
սուս, Չիցէ՞ երբեք ընթերցեալ ձեր
ի գիրս, Զվէմն զոր անարգեցին շի-
նողքն, նա եղեւ գլուխ անկեան. ի
Տեառնէ եղեւ այս, եւ է սքանչելի
43 յաչս մեր։ Վասն այսորիկ ասեմ ձեզ,
զի բարձցի ի ձէնջ արքայութիւնն Աս-
տուծոյ, եւ տացի ազգի որ առնիցէ
44 զպտուղս նորա։ Եւ որ անկցի ի վերայ
վիմիս այսորիկ՝ փշրեսցի, եւ յոյր վե-
45 րայ անկցի՝ հոսեսցէ զնա։ Իբրեւ լուան
քահանայապետքն [1]եւ դպիրք" եւ փա-
րիսեցիք զառակս նորա, գիտացին թէ
46 վասն նոցա ասաց։ Եւ խնդրէին զնա
ունել, բայց երկեան ի ժողովրդոցն,
քանզի իբրեւ զմարգարէ ունէին զնա։

## Գլ. ԻԲ

1 ԿԴ. Դարձեալ պատասխանի ետ Յի-
2 սուս եւ ասէ ցնոսա առակօք. Նմա-
նեցաւ արքայութիւն երկնից առն թա-
գաւորի որ արար հարսանիս որդւոյ
3 իւրում։ Եւ առաքեաց զծառայս իւր
կոչել զհրաւիրեալսն ի հարսանիս, եւ
4 ոչ կամեցան գալ։ Դարձեալ առաքեաց
այլ ծառայս եւ ասէ, Ասացէք հրաւի-
րելոցն, Ահաւասիկ զճաշ իմ պատրաս-
տեցի, զուարակք իմ եւ պարարակք
զենեալ են, եւ ամենայն ինչ պատ-
5 րաստ է. եկայք ի հարսանիսս։ Եւ
նոքա յուլացեալ գնացին, ոմն յագա-
6 րակ իւր, եւ ոմն ի վաճառ իւր. Եւ
այլք կալան զծառայս նորա, թշնա-
7 մանեցին եւ սպանին։ Իսկ թագաւորն
իբրեւ լուաւ, բարկացաւ, եւ առաք-
եաց զզօրս իւր եւ սատակեաց զսպա-
նողսն զայնոսիկ, եւ զքաղաքն նոցա
8 այրեաց։ Յայնժամ ասէ ցծառայս իւր,
Հարսանիքս պատրաստ են, եւ հրա-
9 ւիրեալքն չէին արժանի։ Արդ երթայք
յանցս ճանապարհաց, եւ զորս միան-
գամ գտանիցէք՝ կոչեցէք ի հարսա-
10 նիսս։ Եւ ելեալ ծառայքն ի ճանա-
պարհս՝ ժողովեցին զամենեսեան զոր
եւ գտին, զչարս եւ զբարիս, եւ լցան
11 հարսանիքն բազմականօք։ Եւ մտեալ
թագաւորն հայել զբազմականօքն՝ ե-
տես անդ այր մի որ ոչ էր զգեցեալ
12 հանդերձ հարսանեաց։ Եւ ասէ ցնա,
Ընկեր, զիա՞րդ մտեր այսր, զի ոչ ու-
նէիր հանդերձ հարսանեաց. եւ նա
13 պապանձեցաւ։ Յայնժամ ասէ թագա-
ւորն ցսպասաւորսն, Կապեցէք զոտս
զոտս եւ զձեռս, եւ հանէք զդա ի խա-
ւարն արտաքին. անդ եղիցի լալ եւ
14 կրճել ատամանց. Զի բազումք են կո-
չեցեալք, եւ սակաւք՝ ընտրեալք։
15 ԿԵ. Յայնժամ գնացեալ փարիսեցիքն՝
առին խորհուրդ զնմանէ թէ որպէս
16 զնիցեն նմա որոգայթ բանիւք։ Եւ
առաքեն առ նա զաշակերտս իւրեանց
Հերովդիանոսօքն հանդերձ, եւ ասեն,
Վարդապետ, գիտեմք զի ճշմարիտ ես,
եւ զճանապարհն Աստուծոյ ճշմար-
տութեամբ ուսուցանես, եւ ոչ է քեզ
փոյթ զումեքէ, եւ ոչ հայիս յերեսս
17 մարդոյ։ Արդ ասա մեզ, զիա՞րդ թուի
քեզ, պա՞րտ է հարկս տալ կայսեր թէ
18 ոչ։ Գիտաց Յիսուս զխորամանկու-
թիւն նոցա եւ ասէ, Զի՞ փորձէք
19 զիս, կեղծաւորք. Ցուցէք ինձ զդա-
հեկան հարկին. եւ նոքա մատուցին
20 նմա դահեկան մի։ Եւ ասէ ցնոսա,
21 Ո՞յր է պատկերս այս կամ գիր։ Ասեն,
Կայսեր. յայնժամ ասէ ցնոսա, Եր-
թայք, տուք զկայսերն կայսեր, եւ
22 զԱստուծոյն՝ Աստուծոյ։ Իբրեւ լուան,
զարմացան, եւ թողին զնա եւ գնացին։
23 Յայնմ աւուր մատեան առ նա սա-
դուկեցիքն որ ասէին թէ Չիք յարու-
24 թիւն. հարցին ցնա, Եւ ասեն, Վար-
դապետ, Մովսէս ասաց, Եթէ ոք մեռցի
անորդի, արասցէ զկին նորա եղբայր
իւր, եւ յարուսցէ զաւակ եղբօր իւ-
25 րում։ Էին առ մեզ եղբարք եւթն. ա-
ռաջինն արար կին եւ մեռաւ. եւ զի
ոչ ունէր զաւակ, եթող զկինն իւր
26 եղբօր իւրում. Նոյնպէս եւ երկրորդն
եւ երրորդն մինչեւ ցեւթներորդն։
27 Յետ ամենեցուն մեռաւ եւ կինն։
28 Արդ ի յարութեանն ո՞յր յեւթանցն
եղիցի նա կին, զի ամենեքին կալան
29 զնա կին։ Պատասխանի ետ նոցա Յի-
սուս եւ ասէ, Մոլորեալք, ոչ գիտէք

[1]Ի Յ··նին պ··լ··ւ

*զգիրս եւ ոչ զզօրութիւն Աստուծոյ։*
30 *Զի ի յարութեան ոչ կանայս առնեն*
*եւ ոչ արանց լինին, այլ են իբրեւ*
31 *զհրեշտակս* [1]*յերկինս։ Բայց վասն յա-*
*րութեան մեռելոց չիցէ՞ ընթերցեալ*
32 *զասացեալն ձեզ յԱստուծոյ, Ես եմ*
*Աստուած Աբրահամու, Աստուած Ի-*
*սահակայ եւ Աստուած Յակոբայ. եւ*
*չէ Աստուած* [2]*Աստուած մեռելոց, այլ*
33 *կենդանեաց։ Իբրեւ լուան ժողո-*
*վուրդքն, զարմանային ընդ վարդա-*
*պետութիւն նորա։*
34 *Իսկ փարիսեցիքն իբրեւ լուան եթէ*
*պապանձեցոյց զսադուկեցիսն, ժողո-*
35 *վեցան ի միասին. Եւ եհարց մի ոմն*
[3]*ի նոցանէ զնա փորձելով, եւ ասէ,*
36 *Վարդապետ, ո՞ր պատուիրան է մեծ*
37 *յօրէնս։ Եւ Յիսուս ասէ ցնա, Սի-*
*րեսցես զՏէր Աստուած քո յամենայն*
*սրտէ քումմէ, եւ յամենայն անձնէ*
38 *քումմէ, եւ յամենայն մտաց քոց։ Այս*
39 *է մեծն եւ առաջին պատուիրան։ Եւ*
*երկրորդն՝ նման սմին, Սիրեսցես զըն-*
40 *կեր քո իբրեւ զանձն քո։ Յայս եր-*
*կուս պատուիրանս ամենայն օրէնք*
*եւ մարգարէք կախեալ կան։*
41 *Եւ ի ժողովել փարիսեցւոցն եհարց*
42 *ցնոսա Յիսուս եւ ասէ, Զի՞րդ թուի*
*ձեզ վասն Քրիստոսի. ո՞յր որդի է։*
43 *Ասեն ցնա, Դաւթի։ Ասէ ցնոսա Յի-*
*սուս, Իսկ զիա՞րդ Դաւիթ Հոգւովն*
44 *կոչէ զնա Տէր, եւ ասէ, Ասաց Տէր*
*ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ մինչեւ*
*եդից զթշնամիս քո պատուանդան ո-*
45 *տից քոց։ Իսկ եթէ Դաւիթ զնա Տէր*
46 *կոչէ, զիա՞րդ որդի նորա իցէ։ Եւ ոչ*
*ոք կարէր տալ նմա պատասխանի բան*
*մի, եւ ոչ իշխէր ոք յայնմ օրէ հար-*
*ցանել զնա եւ ոչինչ։*

ԳԼ. ԻԳ

1 ԷԶ. **Յ***այնժամ խօսեցաւ Յիսուս ընդ*
*ժողովուրդսն եւ ընդ աշակերտսն իւր,*
2 *եւ ասէ, Յաթոռն Մովսիսի նստան*
3 *դպիրքն եւ փարիսեցիք. Զամենայն*
*ինչ զոր ասիցեն* [4]*ձեզ՝ արարէք եւ պա-*
*հեցէք, բայց ըստ գործոցն նոցա մի՛*
4 *առնէք, զի ասեն եւ ոչ առնեն։ Կապեն*
*բեռինս ծանունս եւ դժուարակիրս,*
*եւ դնեն ի վերայ ուսոց մարդկան, եւ*
*մատամբ իւրեանց ոչ կամին շարժել*
5 *զնոսա։ Եւ զամենայն գործս իւր-*
*եանց առնեն ի ցոյց մարդկան. լայնեն*
*զգրապանակս իւրեանց, եւ երկայնեն*
6 *զքղանցս հանդերձից իւրեանց։ Սիրեն*
*զյառաջագահս յընթրիս, եւ զնախա-*
*թոռս ի ժողովուրդս, եւ զողջոյնս ի*
7 *հրապարակս, Եւ կոչել ի մարդկանէ,*
8 *Ռաբբի, Ռաբբի։ Բայց դուք մի՛* [5]*զոք*
*կոչէք Վարդապետ՛՛, զի մի է ձեր* [6]*Ու-*
*սուցիչ. եւ ամենեքին դուք եղբարք*
9 *էք։ Եւ Հայր մի՛ կոչէք ձեզ յերկրի,*
*զի ձեր մի է Հայր որ յերկինսն է։*
10 *Եւ մի՛ կոչիցիք ուսուցիչք, զի Ու-*
11 *սուցիչ ձեր* [7]*Քրիստոս է՛՛։ Եւ մեծն*
12 *ի ձէնջ եղիցի ձեր սպասաւոր։ Որ*
*բարձրացուցանէ զանձն՝ խոնարհեսցի,*
*եւ որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձ-*
*րասցի։*
13 *Վա՛յ ձեզ դպրաց եւ փարիսեցւոց*
*կեղծաւորաց, զի փակէք զարքայու-*
*թիւն երկնից առաջի մարդկան. դուք*
*ոչ մտանէք, եւ որոց մտանենն՝ չտայք*
*թոյլ մտանել։*[8]
15 *Վա՛յ ձեզ դպրաց եւ փարիսեցւոց*
*կեղծաւորաց, զի յածիք ընդ ծով եւ*
*ընդ ցամաք առնել եկամուտ մի. եւ*
*յորժամ լինիցի, առնէք զնա որդի գե-*
16 *հենի կրկին եւս քան զձեզ։ Վա՛յ ձեզ,*
*առաջնորդք կոյրք, զի ասէք, Որ երդ-*
*նու ի տաճարն՝ չէ ինչ, բայց որ երդ-*
*նու յոսկին որ ի տաճարին է՝ արժան*
17 *է։ Մորոսք եւ կոյրք, զի՞նչ մեծ է,*
*ոսկի՞ն՝ եթէ տաճարն որ սրբէ զոսկին։*
18 *Եւ որ երդնու ի սեղանն՝ չէ ինչ, բայց*
*որ երդնու ի պատարագն որ ի վերայ*
19 *նորա է՝ արժան է։ Յիմարք եւ կոյրք,*
*զի՞նչ մեծ է, պատարա՞գն՝ եթէ սեղանն*
20 *որ սրբէ զպատարագն։ Իսկ արդ որ*
*երդուաւ ի սեղանն՝ երդնու ի նա եւ*
21 *յամենայն որ ի վերայ նորա է. Եւ որ*
*երդուաւ ի տաճարն՝ երդնու ի նա եւ*
22 *ի բնակիչն նորա. Եւ որ երդուաւ*

[1] Ոմանք, Աստուծոյ [2] Յոմանս պակասէ
[3] Բազումք, ի նոցանէ օրինական
[4] Ոմանք, ձեզ պահել

[5] Յոմանս, կոչիցիք Ռաբբի
[6] Ոմանք, Ուսուցիչ, Քրիստոս
[7] Բազումք, մի է, Քրիստոս
[8] Ոմանք յաւելուն, (14) Վա՛յ ձեզ դպրաց եւ փարիսեցւոց կեղծաւորաց, զի ուտէք զտունս այրեաց, պատճառանօք երկարէք զաղօթս. վասն որոյ աւելի դատաստան ընդունիցիք։

յերկինս՝ երդնու յաթոռն Աստուծոյ եւ
23 յայն որ նստին ի վերայ նորա։ Վա՛յ
ձեզ դպրաց եւ փարիսեցւոց կեղծա-
ւորաց, զի տասանորդէք զանանուխ
եւ զսամիթ եւ զչաման, եւ թողէք
զծանր ծանր օրինացն, զդատաստան
եւ զողորմութիւն եւ զհաւատս. զայս
արժան էր առնել եւ զայն չթողուլ։
24 Առաջնորդք կոյրք, որ զմժղուկս քա-
25 մէք եւ զուղտս կլանէք։ Վա՛յ ձեզ
դպրաց եւ փարիսեցւոց կեղծաւորաց,
զի սրբէք զարտաքին զբաժակին եւ
զսկաւառակին, եւ ի ներքոյ լի են յա-
փշտակութեամբ եւ անխառնութեամբ։
26 Փարիսեցի կոյր, սրբեա նախ զներքին
բաժակին եւ զսկաւառակին, զի լինիցի
27 եւ արտաքինն նոցա սուրբ։ Վա՛յ ձեզ
դպրաց եւ փարիսեցւոց կեղծաւորաց,
զի նման էք գերեզմանաց բռելոց, որ
արտաքոյ երեւին գեղեցիկք, եւ ի ներ-
քոյ լի են ոսկերօք մեռելոց եւ ամե-
28 նայն պղծութեամբ։ Նոյնպէս եւ դուք
արտաքոյ երեւիք մարդկան արդարք,
եւ ի ներքոյ լի էք կեղծաւորութեամբ
29 եւ անօրէնութեամբ։ Վա՛յ ձեզ դպրաց
եւ փարիսեցւոց կեղծաւորաց, զի շի-
նէք զշիրիմս մարգարէից եւ զարդա-
30 րէք զգերեզմանս արդարոց։ Եւ ասէք,
Եթէ էաք յաւուրս հարցն մերոց, ոչ
31 հաղորդէաք արեան մարգարէիցն։ Ապա
ուրեմն վկայէք զանձանց, եթէ որդիք
էք այնոցիկ որ կոտորէին զմարգա-
32 րէսն։ Եւ դուք լցէք զչափ հարցն ձե-
33 րոց։ Օձք, ծնունդք իժից, զիա՞րդ
փախնուցուք ի դատաստանէ գեհենին։
34 Վասն այդորիկ ահաւասիկ ես առաքեմ
առ ձեզ մարգարէս եւ իմաստունս եւ
դպիրս, եւ ի նոցանէ սպանանիցէք եւ
ի խաչ հանիցէք, եւ ի նոցանէ տան-
ջիցէք ի ժողովուրդս ձեր, եւ հալա-
35 ծիցէք ի քաղաքէ ի քաղաք։ Որպէս զի
եկեսցէ ի վերայ ձեր ամենայն արիւն
արդար հեղեալ յերկրի, յարենէն Աբելի
արդարոյ մինչեւ ցարիւնն Զաքարիայ
որդւոյ Բարաքեայ զոր սպանէք ընդ
36 մէջ տաճարին եւ սեղանոյ։ Ամէն ա-
սեմ ձեզ, Եկեսցէ այն ամենայն ի վե-
րայ ազգիս այսորիկ։
37 Երուսաղէմ, Երուսաղէմ, որ [1]կոտո-
րէր զմարգարէսն եւ քարկոծ [2]առնէր
զառաքեալսն [3]առ նա," քանի՜ցս ան-
գամ կամեցայ ժողովել զմանկունս քո,
զոր օրինակ ժողովէ հաւ զձագս իւր
38 ընդ թեւովք, եւ ոչ կամեցարուք։ Ահա
թողեալ լիցի ձեզ տունդ ձեր աւերակ։
39 Բայց ասեմ ձեզ թէ Ոչ եւս տեսանի-
ցէք զիս յայսմ հետէ, մինչեւ ասիցէք,
Օրհնեալ եկեալ յանուն Տեառն։

## ԳԼ. ԻԴ

1 ԷԷ. Եւ ելեալ արտաքս Յիսուս ի
տաճարէն՝ գնայր. եւ մատեան աշա-
կերտքն ցուցանել նմա զշինուածս
2 տաճարին։ Եւ նա պատասխանի ետ
եւ ասէ ցնոսա, Տեսանէ՞ք զայդ ամե-
նայն, ամէն ասեմ ձեզ, ոչ մնասցէ
այդր քար ի քարի վերայ որ ոչ քակ-
3 տեսցի։ Եւ մինչդեռ նստէր ի լերինն
Ձիթենեաց, մատեան առ նա աշա-
կերտքն առանձինն եւ ասեն, Ասա
մեզ, ե՞րբ լինիցի այդ, եւ կամ զի՞նչ
նշան իցէ քոյոյ գալստեանն եւ վախ-
4 ճանի աշխարհիս։ Պատասխանի ետ
Յիսուս եւ ասէ ցնոսա, Զգոյշ լերուք,
5 գուցէ ոք զձեզ խաբիցէ. Զի բազումք
գայցեն յանուն իմ եւ ասիցեն թէ Ես
եմ Քրիստոսն, եւ զբազումս մոլորե-
6 ցուցանիցեն։ Լսելոց էք պատերազ-
մունս եւ համբաւս պատերազմաց.
զգոյշ լերուք, մի՛ խռովիցիք, զի
պարտ է լինել այնմ ամենայնի, այլ
7 չեւ է կատարած։ Յարիցէ ազգ յազգի
վերայ, եւ թագաւորութիւն՝ ի թա-
գաւորութեան, եւ եղիցին սովք եւ
սրածութիւնք եւ սասանութիւնք ի
8 տեղիս տեղիս։ Սակայն եւ այն ամե-
9 նայն սկիզբն է երկանց։ Յայնժամ
մատնեսցեն զձեզ ի նեղութիւն, եւ
սպանանիցեն զձեզ, եւ եղիջիք ատե-
ցեալք յամենայն ազգաց վասն անուան
10 իմոյ։ Եւ յայնժամ գայթակղեսցին
բազումք, եւ զմիմեանս մատնեսցեն
11 եւ ատեսցեն զմիմեանս։ Եւ բազում
սուտ մարգարէք յարիցեն եւ զբա-
12 զումս մոլորեցուսցեն։ Եւ վասն բազ-
մանալոյ անօրէնութեանն՝ ցամաքեսցի
13 սէր բազմաց։ Բայց որ համբերեսցէ
14 ի սպառ՝ նա կեցցէ։ Եւ քարոզեսցի
աւետարանս արքայութեան ընդ ամե-

[1]կամ, կոտորէիր
[2]կամ, առնէիր
[3]Ոմանք, առ քեզ

նայն տիեզերս ի վկայութիւն ամենայն հեթանոսաց, եւ ապա եկեսցէ կատարած։
15 Արդ յորժամ տեսանիցէք զպղծութիւն աւերածոյն, որ ասացեալ է ի ձեռն Դանիէլի մարգարէի, զի կայցէ ի տեղւոջն սրբութեան. (որ ընթեռ-
16 նուն ի միտ առցէ.) Յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ի լերինս։
17 Եւ որ ի տանիս կայցէ՝ մի՛ իջցէ առ-
18 նուլ ինչ ի տանէ իւրմէ. Եւ որ յանդի իցէ՝ մի՛ դարձցի յետս առնուլ զձորձս
19 իւր։ Բայց վա՛յ իցէ յղեաց եւ ստըն-
20 տուաց յաւուրսն յայնոսիկ։ Յաղօթս կացէք զի մի՛ լինիցի փախուստն ձեր
21 ձմերայնի եւ մի՛ ի շաբաթու։ Զի եղիցի յայնժամ նեղութիւն մեծ, որպիսի ոչ եղեւ ի սկզբանէ աշխարհի
22 մինչեւ ցայժմ, եւ ոչ այլ լիցի։ Եւ եթէ ոչ կարճէին աւուրքն այնոքիկ, ոչ ապրէր ամենայն մարմին. բայց վասն ընտրելոցն կարճեսցին աւուրքն
23 այնոքիկ։ Յայնժամ թէ ոք ասիցէ ձեզ, Ահաւասիկ աստ է Քրիստոսն կամ
24 անդ, մի՛ հաւատայցէք։ Զի յարիցեն սուտ քրիստոսք եւ սուտ մարգարէք, եւ տացեն նշանս մեծամեծս եւ արուեստս, մինչեւ մոլորեցուցանել, թէ
25 հնար ինչ իցէ, եւ զընտրեալսն։ Ահա
26 յառաջագոյն ասացի ձեզ։ Արդ եթէ ասիցեն ձեզ, Ահաւանիկ յանապատի է, մի՛ ելանիցէք, եւ թէ՝ Ահա ի շտե-
27 մարանս է, մի՛ հաւատայցէք։ Զի որպէս փայլակն որ ելանէ յարեւելից եւ երեւի մինչեւ յարեւմուտս, այնպէս
28 եղիցի գալուստն Որդւոյ մարդոյ։ Զի ուր գէշն իցէ՝ անդ՝ժողովեսցին արծուիք։
29 Վաղվաղակի յետ նեղութեան աւուրցն այնոցիկ արեգակն խաւարեսցի, եւ լուսին ոչ տացէ զլոյս իւր, եւ աստեղք անկցին յերկնից, եւ զօրու-
30 թիւնք երկնից շարժեսցին։ Եւ ապա երեւեսցի նշան Որդւոյ մարդոյ յերկինս, եւ յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի, եւ տեսցեն զՈրդի մարդոյ եկեալ ի վերայ ամպոց երկնից զօ-
31 րութեամբ եւ փառօք բազմօք։ Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ, եւ ժողովեսցեն զընտրեալս նորա ի չորից հողմոց, ի ծագաց երկնից մին-
32 չեւ ի ծագս նոցա։ Ի թզենւոյ անտի ուսարուք զառակն. զի յորժամ նորա ոստքն կակղասցին եւ տերեւն ցցուի-
33 ցի, գիտէք թէ մերձ է ամառն։ Նոյնպէս եւ դուք յորժամ տեսանիցէք զայս ամենայն, գիտասջիք թէ մերձ է ի դուրս։
34 Ամէն ասեմ ձեզ եթէ Ոչ անցցէ ազգս այս, մինչեւ այս ամենայն եղիցի։
35 Երկինք եւ երկիր անցցեն, եւ բանք իմ մի՛ անցցեն։
36 Բայց վասն աւուրն այնորիկ եւ ժամու ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակք երկնից, [1]եւ ոչ Որդի,՟ բայց միայն
37 [2]Հայր։ Այլ որպէս աւուրքն Նոյի, այնպէս եղիցի գալուստն Որդւոյ մար-
38 դոյ։ Զի որպէս էին յաւուրսն որ յառաջ քան զջրհեղեղն, ուտէին եւ ըմպէին, կանայս առնէին եւ արանց լինէին, մինչեւ յօրն յորում եմուտ Նոյ
39 ի տապանն, Եւ ոչ գիտացին մինչեւ եկն ջրհեղեղն եւ եհարձ զամենեսին. այնպէս եղիցի եւ գալուստն Որդւոյ
40 մարդոյ։ Յայնժամ թէ իցեն երկու յագարակի, մին առնուցու եւ միւսն
41 թողուցու։ Եւ եթէ երկու աղացցեն ի մի երկանս, մին առնուցու եւ միւսն
42 թողուցու։ Արթուն կացէք, զի ոչ գիտէք յորում ժամու Տէրն ձեր գայ։
43 Զայն գիտասջիք, եթէ գիտէր տանուտէրն յորում պահու գող գայ, հսկէր եւ ոչ տայր ական հատանել զտան
44 իւրոյ. Վասն այսորիկ եւ դուք եղերուք պատրաստք, զի յորում ժամու ոչ ակն ունիցիք, գայ Որդի մարդոյ։
45 Իսկ ո՞վ իցէ հաւատարիմ ծառայ եւ իմաստուն զոր կացոյց տէր իւր ի վերայ ծառայից իւրոց տալ նոցա կերա-
46 կուր ի ժամու։ Երանի է ծառային այնմիկ զոր եկեալ տէրն գտանիցէ
47 արարեալ այնպէս։ Ամէն ասեմ ձեզ, զի ի վերայ ամենայն ընչից իւրոց կա-
48 ցուսցէ զնա։ Ապա թէ ասիցէ ծառայն չար ի սրտի իւրում, Տէր իմ յամէ
49 գալ. Եւ սկսանիցի հարկանել զծառայակիցս իւր, ուտիցէ եւ ըմպիցէ
50 ընդ արբեցողս. Գայցէ տէր ծառային այնորիկ յաւուր յորում ոչ ակն ունիցի, եւ ի ժամու յորում ոչ գիտիցէ.
51 Եւ կտրեսցէ զնա ընդ մէջ, եւ զբաժին նորա ընդ կեղծաւորս դիցէ. անդ եղիցի լալ եւ կրճել ատամանց։

---

[1] Յոմանս պակասէ [2] Ոմանք, Հայր իմ

## Գլ. ԻԵ

1 Յայնժամ նմանեսցի արքայութիւն
երկնից տասն կուսանաց, որոց առեալ
զլապտերս իւրեանց ելին ընդ առաջ
2 փեսային [1]եւ հարսին[1]։ Հինգն ի նո-
ցանէ յիմարք էին, եւ հինգն իմաս-
3 տունք։ Յիմարքն առին զլապտերսն,
4 եւ ձէթ ընդ իւրեանս ոչ բարձին։ Իսկ
իմաստունքն առին ձէթ ամանովք ընդ
5 լապտերս իւրեանց։ Եւ ի յամել փեսա-
յին՝ նիրհեցին ամենեքեան եւ ի քուն
6 մտին։ Եւ ի մէջ գիշերի եղեւ բար-
բառ, Ահա փեսայ գայ, արիք ընդ
7 առաջ նորա։ Յայնժամ յարեան ամե-
նայն կուսանքն եւ կազմեցին զլապ-
8 տերս իւրեանց։ Ասեն յիմարքն ցիմաս-
տունսն, Տուք մեզ յիւղոյդ ձերմէ, զի
9 ահա շիջանին լապտերքս մեր։ Պա-
տասխանի ետուն իմաստունքն եւ ա-
սեն, Գուցէ ոչ իցէ մեզ եւ ձեզ բա-
ւական, այլ երթայք ի վաճառականս
10 եւ գնեսջիք ձեզ։ Իբրեւ նոքա գնացին
գնել, եկն փեսայն, եւ պատրաստքն
մտին ընդ նմա ի հարսանիսն, եւ փա-
11 կեցաւ դուռնն։ Յետոյ գան եւ այլ
կուսանքն եւ ասեն, Տէր, Տէր, բաց
12 մեզ։ Նա պատասխանի ետ եւ ասէ,
Ամէն ասեմ ձեզ թէ Ոչ գիտեմ զձեզ։
13 Արթուն կացէք զի ոչ գիտէք զօրն եւ
ոչ [2]զժամն։

14 Որպէս այր մի գնացեալ ի տարաշ-
խարհ, կոչեաց զծառայս իւր եւ ետ
15 նոցա զինչս իւր. Ումեմն ետ հինգ
քանքար, եւ ումեմն՝ երկուս, եւ ու-
մեմն՝ մի. իւրաքանչիւր ըստ իւրում
16 կարի, եւ գնաց։ Զօգաւ վաղվաղակի
որ առ զհինգն, գործեաց նոքօք եւ շա-
17 հեցաւ այլ եւս հինգ։ Նոյնպէս եւ որ
զերկուսն՝ շահեցաւ այլ եւս երկուս։
18 Եւ որ զմին առ՝ գնաց, փորեաց զերկիր,
եւ թաքոյց զարծաթ տեառն իւրոյ։
19 Յետ բազում ժամանակի գայ տէր ծա-
ռայիցն այնոցիկ եւ առնէ համարս
20 ի մէջ նոցա։ Եւ մատուցեալ որ զհինգ
քանքարն առ՝ մատոյց այլ եւս հինգ
քանքար, եւ ասէ, Տէր, հինգ քան-
քար ետուր ցիս, արդ ահաւասիկ հինգ
այլ եւս քանքար ի վերայ շահեցայ։
21 Ասէ ցնա տէրն իւր, Ազնիւ, ծառայ
բարի եւ հաւատարիմ, որովհետեւ ի
սակաւուդ հաւատարիմ ես, ի վերայ
բազմաց կացուցից զքեզ. մուտ յու-
22 րախութիւն տեառն քո։ Մատուցեալ
եւ որոյ զերկուս քանքարսն առեալ
էր, եւ ասէ, Տէր, երկուս քանքարս
ետուր ցիս, ահաւասիկ երկուս եւս
այլ քանքարս զոր ի վերայ շահեցայ։
23 Ասէ ցնա տէրն իւր, Ազնիւ, ծառայ
բարի եւ հաւատարիմ, որովհետեւ ի
սակաւուդ հաւատարիմ ես, ի վերայ
բազմաց կացուցից զքեզ. մուտ յու-
24 րախութիւն տեառն քո։ Մատուցեալ
եւ որոյ զմի քանքարն առեալ էր, եւ
ասէ, Տէր, գիտէի զի այր մի խիստ
ես, հնձես զոր ոչ սերմանեցեր, եւ
25 ժողովես ուստի ոչ սփռեցեր. Երկեայ,
գնացի եւ թաքուցի զքանքարն քո
յերկրի. արդ ահաւասիկ քոյդ ցքեզ։
26 Պատասխանի ետ տէրն եւ ասէ ցնա,
Ծառայ չար եւ վատ, գիտէիր եթէ
հնձեմ ուստի ոչ սերմանեցի, եւ ժո-
27 ղովեմ ուստի ոչ սփռեցի. Պարտ էր
քեզ արկանել զարծաթդ իմ ի սեղա-
նաւորս, եւ եկեալ ես տոկոսեօք պա-
28 հանջէի զիմն։ Արդ առէք ի դմանէ
զքանքարդ, եւ տուք այնմ որ ունիցի
29 զտասն քանքարն։ Զի ամենայնի որ
ունիցի՝ տացի եւ յաւելցի, եւ որ ոչն
ունիցի՝ եւ զոր ունիցին բարձցի ի նմա-
30 նէ։ Եւ զծառայդ անպիտան հանէք
ի խաւարն արտաքին, անդ եղիցի լալ
եւ կրճել ատամանց։

31 Եւ յորժամ եկեսցէ Որդի մարդոյ
փառօք իւրովք եւ ամենայն հրեշտակք
ընդ նմա, յայնժամ նստցի յաթոռ փա-
32 ռաց իւրոց։ Եւ ժողովեսցին առաջի
նորա ամենայն ազգք, եւ մեկնեսցէ
զնոսա ի միմեանց, որպէս հովիւ զի
33 մեկնէ զօդիս յայծեաց. Եւ կացուսցէ
զօդիսն ընդ աջմէ իւրմէ, եւ զայծիսն՝
34 ի ձախմէ։ Յայնժամ ասասցէ Թագա-
ւորն ցայնոսիկ որ ընդ աջմէն իցեն,
Եկայք, օրհնեալք Հօր իմոյ, ժառան-
գեցէք զպատրաստեալ ձեզ զարքայու-
35 թիւնն ի սկզբանէ աշխարհի։ Զի քաղ-
ցեայ, եւ ետուք ինձ ուտել. ծարա-
ւեցի, եւ արբուցէք ինձ. օտար էի,
36 եւ ժողովեցէք զիս. Մերկ՝ եւ զգեցու-
ցէք զիս. հիւանդ էի, եւ տեսէք զիս.
37 ի բանտի էի, եւ եկիք առ իս։ Յայնժամ

---

[1] Ի բնագրին պակասէ

[2] Ոմանք, զժամն յորում Որդի մարդոյ գայցէ

պատասխանի տացեն նմա արդարքն
եւ ասասցեն, Տէր, ե՞րբ տեսաք զքեզ
քաղցեալ, եւ կերակրեցաք. կամ ծա-
38 րաւի՝ եւ արբուցաք. Ե՞րբ տեսաք զքեզ
օտար, եւ ժողովեցաք, կամ մերկ՝ եւ
39 զգեցուցաք։ Ե՞րբ տեսաք զքեզ հիւանդ
40 կամ ի բանտի, եւ եկաք առ քեզ։ Պա-
տասխանի տայէ Թագաւորն եւ ասաս-
ցէ ցնոսա, Ամէն ասեմ ձեզ, Որովհե-
տեւ արարէք միում յեղբարցս այսոցիկ
41 փոքրկանց՝ ինձ արարէք։ Յայնժամ
ասասցէ եւ ցայնոսիկ որ ընդ ահեկէն
իցեն, Երթայք յինէն, անիծեալք, ի
հուրն յաւիտենական, որ պատրաս-
տեալ է Սատանայի եւ հրեշտակաց նո-
42 րա։ Զի քաղցեայ, եւ ոչ ետուք ինձ
ուտել. ծարաւեցի, եւ ոչ արբուցէք
43 զիս. Օտար էի, եւ ոչ ժողովեցէք զիս,
մերկ էի, եւ ոչ զգեցուցէք զիս, հի-
ւանդ եւ ի բանտի՝ եւ ոչ տեսէք զիս։
44 Յայնժամ պատասխանի տայցեն եւ նո-
քա եւ ասասցեն, Տէր, ե՞րբ տեսաք
զքեզ քաղցեալ կամ ծարաւի կամ օտար
կամ մերկ կամ հիւանդ կամ ի բանտի,
45 եւ ոչ պաշտեցաք զքեզ։ Յայնժամ պա-
տասխանի տացէ նոցա եւ ասասցէ,
Ամէն ասեմ ձեզ, Որովհետեւ ոչ արա-
րէք միում ի փոքրկանցս յայսցանէ,
եւ ոչ ինձ արարէք։
46 Եւ երթիցեն նոքա ի տանջանսն յա-
ւիտենականս, եւ արդարքն՝ ի կեանսն
յաւիտենականս։

## ԳԼ. ԻԶ

1 Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յիսուս
զամենայն զբանս զայսոսիկ, ասէ ցա-
2 շակերտսն իւր, Գիտէք զի յետ եր-
կուց աւուրց զատիկ լինի, եւ Որդի
մարդոյ մատնի ի խաչ ելանել։ Վ.Զ
3 Յայնժամ ժողովեցան քահանայա-
պետքն եւ դպիրք եւ ծերք ժողովրդ-
եանն ի սրահ քահանայապետին որում
4 անուն էր Կայիափա. Եւ արարին խոր-
հուրդ զի նենգութեամբ կալցին զՅի-
5 սուս եւ սպանցեն։ Բայց ասէին թէ
Մի՛ ի տօնի աստ, զի մի՛ խռովութիւն
լինիցի ի ժողովրդեանն։
6 Իբրեւ եկն Յիսուս ի Բեթանիա ի
7 տուն Սիմովնի բորոտի, Մատեաւ առ
նա կին մի որ ունէր շիշ իւղոյ ծան-
րագնի, եւ թափեաց ի գլուխ նորա ի
8 բազմականին։ Իբրեւ տեսին աշա-
կերտքն, բարկացան եւ ասեն, Ընդէ՞ր
9 է կորուստ այդ իւղոյդ. Զի մարթ էր
վաճառել զդա մեծագնի եւ տալ աղքա-
10 տաց։ Գիտաց Յիսուս եւ ասէ ցնոսա,
Զի՞ աշխատ առնէք զկինդ, գործ մի
11 բարի գործեաց դա յիս։ Յամենայն
ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք, բայց
զիս ոչ հանապազ ընդ ձեզ ունիք։
12 Արկանել զորա զեւղդ ի մարմին իմ՝
13 առ ի թաղելոյ զիս նշանակեաց։ Բայց
ամէն ասեմ ձեզ, զի ուր եւ քարոզես-
ցի աւետարանս այս ընդ ամենայն աշ-
խարհ, խօսեսցի եւ զոր արար դա ի
յիշատակ դորա։
14 Յայնժամ գնաց մի յերկոտասանիցն
անուանեալ Յուդա Իսկարիովտացի առ
15 քահանայապետսն, եւ ասէ, Զի՞նչ կա-
միք տալ ինձ, եւ ես մատնեցից զնա
ձեզ. եւ նոքա [1]կշռեցին նմա երեսուն
16 արծաթի։ Եւ յայնմ հետէ խնդրէր պա-
րապ զի մատնեսցէ զնա նոցա։
17 Եւ յառաջնում աւուր բաղարջակե-
րացն մատեան աշակերտքն առ Յիսուս
եւ ասեն, Ո՞ւր կամիս զի պատրաս-
18 տեսցուք քեզ ուտել զզատիկն։ Եւ նա
ասէ ցնոսա, Երթայք ի քաղաքն առ
այս անուն եւ ասացէք ցնա, Վարդա-
պետ ասէ, Ժամանակ իմ մերձեալ է,
առ քեզ առնեմ զզատիկն աշակերտօքս
19 հանդերձ։ Եւ արարին աշակերտքն
որպէս հրամայեաց նոցա Յիսուս, եւ
պատրաստեցին զզատիկն։
20 Եւ իբրեւ երեկոյ եղեւ, կայր բազ-
մեալ ընդ երկոտասան աշակերտսն։
21 Եւ մինչդեռ ուտէին նոքա, ասէ, Ամէն
ասեմ ձեզ, զի մի ոմն ի ձէնջ մատնե-
22 լոց է զիս։ Եւ տրտմեցան յոյժ, սկսան
ասել ցնա իւրաքանչիւր ոք ի նոցանէ,
23 Միթէ ե՞ս իցեմ, Տէր։ Նա պատաս-
խանի ետ եւ ասէ, Որ մխեաց ընդ իս
զձեռն իւր ի սկուտեղն՝ նա մատնե-
24 լոց է զիս։ Որդի մարդոյ երթայ, որպէս
եւ գրեալ է վասն նորա, բայց վա՜յ մար-
դոյն այնմիկ յոյր ձեռն Որդի մարդոյ
մատնեսցի. լաւ էր նմա թէ չէր ծնեալ
25 մարդն այն։ Պատասխանի ետ Յուդա
որ մատնելոցն էր զնա եւ ասէ, Միթէ
ե՞ս իցեմ, վարդապետ. ասէ ցնա, Դու
ասացեր։

---

[1] կամ, խոստացան

26 Եւ մինչդեռ ուտէին նոքա, առ Յի-
սուս հաց, օրհնեաց եւ եբեկ, եւ ետ
աշակերտացն եւ ասէ, Առէք, կերայք,
27 այս է մարմին իմ։ Եւ առեալ բաժակ
գոհացաւ, ետ նոցա եւ ասէ, Արբէք
28 ի դմանէ ամենեքին. Զի այդ է արիւն
իմ նորոյ ուխտի, որ ի վերայ բազմաց
29 հեղու ի թողութիւն մեղաց։ Բայց ա-
սեմ ձեզ, Ոչ եւս արբից յայսմ հետէ ի
բերոյ որթոյ մինչեւ ցօրն յայն, յորժամ
արբից զդա ընդ ձեզ նոր յարքայու-
թեան Հօր իմոյ։
30 Եւ օրհնեցին, եւ ելին ի լեառն Ձի-
31 թենեաց։ Յայնժամ ասէ ցնոսա Յի-
սուս, Ամենեքին դուք գայթակղելոց
էք յինէն յայսմ գիշերի. զի գրեալ է
թէ Հարից զհովիւն եւ ցրուեսցին ոչ-
32 խարք հօտին։ Եւ յետ յառնելոյն իմոյ
33 յառաջեցից քան զձեզ ի Գալիլեա։ Պա-
տասխանի ետ Պետրոս եւ ասէ ցնա,
Թէպէտ եւ ամենեքեան գայթակղեսցին
ի քէն, սակայն ես ոչ գայթակղեցայց։
34 Ասէ ցնա Յիսուս, Ամէն ասեմ քեզ զի
յայսմ գիշերի մինչչեւ հաւու խօսեալ
35 իցէ, երիցս ուրասցիս զիս։ Ասէ ցնա
Պետրոս, Թէ եւ մեռանել հասանիցէ
ընդ քեզ, զքեզ ոչ ուրացայց. նոյնպէս
եւ ամենայն աշակերտքն ասէին։
36 Յայնժամ գայ Յիսուս ընդ նոսա ի
գեղ մի որում անուն էր Գեթսեմանի,
եւ ասէ ցնոսա, Նստարուք այդր, մին-
37 չեւ երթայց կացից յաղօթս։ Եւ առեալ
ընդ իւր զՊետրոս եւ զերկուս որդիսն
Զեբեդեայ՝ սկսաւ տրտմել եւ հոգալ։
38 Յայնժամ ասէ ցնոսա, Տրտում է ոգի
իմ մինչեւ ի մահ, կացէք աստ եւ սկե-
39 ցէք ընդ իս։ Եւ մատուցեալ յառաջ
սակաւիկ մի, անկաւ ի վերայ երեսաց
իւրոց, կայ յաղօթս եւ ասէ, Հայր իմ,
եթէ հնար է, անցցէ բաժակս այս յինէն.
բայց ոչ որպէս ես կամիմ, այլ որպէս
40 դու։ Գայ առ աշակերտսն, եւ գտանէ
զնոսա ի քուն, եւ ասէ ցՊետրոս, Այդ-
պէս ո՞չ կարացէք մի ժամ արթուն կալ
41 ընդ իս։ Արթուն կացէք եւ աղօթս ա-
րարէք զի մի՛ անկանիցիք ի փորձու-
թիւն. հոգիս յօժար է, բայց մարմինս
42 տկար։ Դարձեալ երկրորդ անգամ չո-
գաւ, եկաց յաղօթս Յիսուս եւ ասէ,
Հայր իմ, եթէ [1]հնար իցէ" անցանել
յինէն բաժակիս այսմիկ, [2]ապա թէ ոչ՝
43 արբից զսա", եղիցին կամք քո։ Եւ եկ-
եալ միւսանգամ եգիտ զնոսա ի քուն,
զի էին աչք իւրեանց ծանրացեալք։
44 Եթող զնոսա եւ գնաց, կաց յաղօթս
երրորդ անգամ, եւ դարձեալ զնոյն բան
45 ասաց։ Յայնժամ գայ առ աշակերտսն
եւ ասէ ցնոսա, Ննջեցէք այսուհետեւ
եւ հանգերուք, զի ահա հասեալ է ժամ,
եւ Որդի մարդոյ մատնի ի ձեռս մե-
46 ղաւորաց։ Արիք, երթիցուք աստի,
զի ահաւասիկ եհաս որ մատնելոցն է
զիս։
47 Եւ մինչդեռ նա զայն խօսէր, ահա
Յուդա, մի յերկոտասանիցն եկն, եւ
ընդ նմա ամբոխ բազում սրովք եւ
բրօք ի քահանայապետիցն եւ ի ծերոց
48 ժողովրդեանն։ Եւ որ մատնելոցն էր
զնա՝ ետ նոցա նշան եւ ասէ, Ընդ ո-
րում եւ համբուրեցից՝ նա է, զնա ու-
49 նիցիք։ Եւ վաղվաղակի մատուցեալ
առ Յիսուս՝ ասէ, Ողջ լեր, վարդապետ.
50 եւ համբուրեաց զնա։ Եւ Յիսուս
ասէ ցնա, Ընկեր, վասն որո՞յ եկիր.
յայնժամ մատուցեալ արկին ձեռս ի
51 Յիսուս եւ կալան զնա։ Եւ ահա մի
ոմն յայնցանէ, որ էին ընդ Յիսուսի՝
ձգեաց զձեռն եւ եհան զսուր իւր եւ
եհար զծառայ քահանայապետին, եւ
52 ի բաց եհան զունկն նորա։ Յայնժամ
ասէ ցնա Յիսուս, Դարձո զսուր քո
ի տեղի իւր, զի ամենեքեան որ սուր
53 առնուցուն՝ սրով անկանիցին։ Թէ
համարիցիս թէ ո՞չ կարիցեմ աղաչել
զՀայր իմ, եւ հասուցանիցէ ինձ այժմ
այսր աւելի քան զերկոտասան գունդս
54 հրեշտակաց։ Այլ զիա՞րդ լնուցուն գիրք
թէ այսպէս պարտ է լինել։
55 Յայնժամ ասաց Յիսուս ցամբոխն,
Իբրեւ ի վերայ աւազակի՞ ելէք սու-
սերօք եւ բրօք ունել զիս. հանապազ
առ ձեզ ի տաճարին նստէի եւ ուսու-
56 ցանէի, եւ ոչ կալայք զիս։ Այլ այս ա-
մենայն եղեւ զի լցցին գիրք մարգա-
րէիցն։ Յայնժամ աշակերտքն ամենե-
քին թողին զնա եւ փախեան։
57 Իսկ նոցա կալեալ զՅիսուս՝ ածին առ
Կայիափա քահանայապետ, ուր դպիրքն
58 եւ ծերք ժողովեալ էին։ Եւ Պետրոս
զհետ նորա երթայր բացագոյն մինչեւ

[1]Յ-ձն, չիցէ հնար

[2]Յ-ձն, եթէ ոչ արբից զսա

*ի սրահ քահանայապետին, եւ մտեալ*
*ի ներքս՝ նստէր ընդ սպասաւորսն տես-*
59 *անել զկատարածն։ Իսկ քահանայա-*
*պետքն եւ ամենայն ատեանն խնդրէ-*
*ին սուտ վկայութիւն զՅիսուսէ, զի*
60 *սպանցեն զնա. Եւ ոչ գտանէին ի բազ-*
*մաց սուտ վկայիցն մատուցելոց. յետոյ*
61 *մատուցեալ երկու սուտ վկայք, Ասէին*
*թէ Սա ասէր, Կարող եմ քակել զտա-*
*ճարն Աստուծոյ, եւ զերիս աւուրս*
62 *շինել։ Եւ յարուցեալ քահանայապետն*
*ասէ ցնա, Չտա՞ս ինչ պատասխանի,*
63 *զի՞նչ դոքա ամբաստանեն զքէն։ Եւ*
*Յիսուս լուռ կայր։ Պատասխանի ետ*
*քահանայապետն եւ ասէ ցնա, Երդմնե-*
*ցուցանեմ զքեզ յԱստուած կենդանի,*
*զի ասասցես մեզ՝ թէ դո՞ւ ես Քրիս-*
64 *տոսն Որդի Աստուծոյ։ Ասէ ցնա Յի-*
*սուս, Դու ասացեր. բայց ասեմ ձեզ,*
*Յայսմ հետէ տեսանիցէք զՈրդի մարդոյ*
*նստեալ ընդ աջմէ Զօրութեանն եւ*
65 *եկեալ ընդ ամպս երկնից։ Յայնժամ*
*քահանայապետն պատառեաց զհան-*
*դերձս իւր, եւ ասէ, Հայհոյեաց, զի՞*
*եւս պիտոյ են մեզ վկայք, ահա արդ*
66 *լուայք զհայհոյութիւն դորա. Զի՞նչ*
*հաճոյ է ձեզ. Նոքա պատասխանի ե-*
67 *տուն եւ ասեն, Մահապարտ է։ Յայն-*
*ժամ թքին ընդ երեսս նորա եւ կափե-*
*ցին զնա, եւ ոմանք ապտակեցին, եւ*
68 *ասեն, Մարգարեաց մեզ, Քրիստոս,*
*ո՞վ է որ եհարն զքեզ։*
69 *Իսկ Պետրոս նստէր արտաքոյ ի*
*գաւթին. մատեաւ առ նա աղախին մի*
*եւ ասէ, Եւ դու ընդ Յիսուսի Գալի-*
70 *լեացւոյ էիր։ Նա ուրացաւ առաջի ա-*
*մենեցուն եւ ասէ թէ Ոչ գիտեմ զինչ*
71 *խօսիս։ Եւ իբրեւ ել նա արտաքս*
*քան զդուռնն, ետես զնա այլ կին մի,*
*եւ ասէ ցայնոսիկ որ անդն կային, Եւ*
72 *սա ընդ Յիսուսի Նազովրեցւոյ էր։ Եւ*
*դարձեալ ուրացաւ երդմամբ թէ Ոչ գի-*
73 *տեմ զայրն։ Եւ յետ սակաւ միոյ մա-*
*տուցեալ որք կային անդ՝ ասեն ցՊետ-*
*րոս, Արդարեւ եւ դու ի նոցանէ ես,*
*քանզի եւ խօսք քո յայտ առնեն զքեզ։*
74 *Յայնժամ սկսաւ նզովել եւ երդնուլ*
*թէ Ոչ գիտեմ զայրն. եւ խօսողն հաւ*
75 *խօսեցաւ։ Եւ յիշեաց Պետրոս զբանն*
*Յիսուսի զոր ասաց թէ Մինչչեւ հաւու*
*խօսեալ իցէ, երիցս ուրասցիս զիս։*
*եւ ելեալ արտաքս՝ ելաց դառնապէս։*

## Գլ. ԻԷ

1 *Իբրեւ այգ եղեւ, խորհուրդ արարին*
*ամենայն քահանայապետքն եւ ծերք*
*ժողովրդեանն վասն Յիսուսի սպանա-*
2 *նել զնա։ Կապեցին զնա եւ տարին զնա-*
*ցին, եւ ետուն ի ձեռս Պոնտացւոյ Պի-*
*ղատոսի դատաւորի։*
3 *Յայնժամ տեսեալ Յուդայի որ մատ-*
*նեացն զնա թէ պարտաւորեցաւ, զղջա-*
*ցաւ եւ դարձոյց [1]զարծաթն առ քա-*
*հանայապետսն եւ ծերս ժողովրդեանն",*
4 *Եւ ասէ, Մեղայ զի մատնեցի զարիւն*
*արդար. եւ նոքա ասեն, Մեզ չէ փոյթ,*
5 *դու գիտես։ Եւ ընկէց զարծաթն ի*
*տաճարին եւ գնաց, եւ չոգաւ խեղ-*
6 *դեցաւ։ Իսկ քահանայապետիցն առեալ*
*զարծաթն՝ ասեն, Ոչ է արժան ընդու-*
*նել զայդ ի կորբանն, քանզի գինք*
7 *արեան են։ Խորհուրդ արարեալ, գնե-*
*ցին այնու զագարակն բրտի ի գերեզ-*
8 *ման օտարաց։ Վասն այնորիկ կոչեցաւ*
*ագարակն այն Ագարակ արեան մինչեւ*
9 *ցայսօր։ Յայնժամ լցաւ որ ասացաւն*
*ի ձեռն [2]Երեմիայի մարգարէի, Եւ ա-*
*ռին զերեսուն արծաթին զգինս վա-*
*ճառելոյն, զոր արկին յորդւոցն Իս-*
10 *րայէլի, Եւ ետուն զնա յագարակն*
*բրտի, որպէս հրամայեաց ինձ Տէր։*
11 *Եւ Յիսուս եկաց առաջի դատա-*
*ւորին. եհարց ցնա դատաւորն եւ ասէ,*
*Դո՞ւ ես թագաւորն Հրէից. եւ Յիսուս*
12 *ասէ, Դու ասես։ Եւ ի չարախօսելն*
*նորա ի քահանայապետիցն եւ ի ծերոց,*
13 *ոչինչ ետ պատասխանի։ Յայնժամ*
*ասէ ցնա Պիղատոս, Ո՞չ լսես որչափ*
14 *դոքա հակառակ քո վկայեն։ Եւ ոչ ետ*
*նմա պատասխանի եւ ոչ բան մի, մին-*
*չեւ զարմանալ դատաւորին յոյժ։*
15 *Բայց ըստ տօնի սովոր էր դատա-*
*ւորն արձակել ժողովրդեանն կապեալ*
16 *մի զոր կամէին։ Ունէին յայնժամ*
*կապեալ մի նշանաւոր, որում անուն*
17 *էր [3]Յեսու Բարաբբա։ Իբրեւ ժողո-*
*վեցան, ասէ ցնոսա Պիղատոս, Զո՞*
*կամիք [4]յերկուց աստի զի արձակեցից*
*ձեզ, զՅեսու Բարաբբա՞" եթէ զՅիսուս*
18 *զանուանեալն Քրիստոս։ Քանզի գի-*

---

[1] Յոյն, զերեսուն արծաթին առ քահանայա-
պետսն եւ ծերս
[2] Յոմանս զակ. [3] Ի բազումս զակ.
[4] Բազումք, զի՞ արձակեցից ձեզ, զԲարաբբա՞

տէր թէ առ նախանձու մատնեցին զնա։
19 Եւ մինչ նստէր յատենին, առաքեաց
առ նա կին իւր եւ ասէ, Զկայ ինչ քո
եւ արդարոյն այնորիկ, զի բազում
անցք անցին ընդ իս այսօր յանուրջս
20 վասն նորա։ Իսկ քահանայապետքն
եւ ծերք հաւանեցուցին զժողովուրդն,
զի խնդրեսցեն զԲարաբբայն, եւ զՅի-
21 սուս կորուսցեն։ Պատասխանի ետ
դատաւորն եւ ասէ ցնոսա, Զո՞ կամիք
զի արձակեցից ձեզ յերկուց աստի. եւ
22 նոքա ասեն, զԲարաբբա։ Ասէ ցնոսա
Պիղատոս, Իսկ զի՞ արարից զՅիսուս
23 զանուանեալն Քրիստոս։ Ասեն ամե-
նեքեան, Խաչեսցի. եւ նա ասէ, Զի՞նչ
չար արար. եւ նոքա առաւել եւս ա-
24 ղաղակէին եւ ասէին, Խաչեսցի։ Եւ
տեսեալ Պիղատոսի թէ ոչինչ օգնէ,
այլ առաւել խռովութիւն լինի, առեալ
ջուր՝ լուաց զձեռս առաջի ժողովրդ-
եանն եւ ասէ, Քաւեալ եմ ես յարենէ
արդարոյդ այդորիկ. դուք գիտասջիք։
25 Պատասխանի ետ ամենայն ժողովուրդն
եւ ասէ, Արիւն դորա ի վերայ մեր եւ
26 ի վերայ որդւոց մերոց։ Յայնժամ ար-
ձակեաց նոցա զԲարաբբայն, եւ զՅիսուս
զան հարեալ՝ ետ ի ձեռս զի խաչեսցի։
27 Յայնժամ զինուորք դատաւորին ա-
ռին զՅիսուս յապարանս, եւ ժողովե-
ցին ի վերայ նորա զամենայն զգունդն.
28 Մերկացին զնա, եւ արկին զնովաւ
29 քղամիդ կարմիր։ Եւ յօրինեալ պսակ
ի փշոց՝ եդին ի գլուխ նորա, եւ եղէգն՝
յաջոյ ձեռին նորա. ի ծունր իջեալ ա-
ռաջի նորա՝ կատակէին եւ ասէին,
30 Ողջ եր, թագաւոր Հրէից։ Եւ թքեալ
ի նա՝ առնուին զեղէգնն եւ ծեծէին
31 զգլուխ նորա։ Եւ յորժամ ձաղեցին
զնա, մերկացուցին ի նմանէ զքղամիդն
եւ ագուցին նմա զիւր հանդերձն, եւ
տարան զնա ի խաչ հանել։
32 Եւ ելեալ արտաքս՝ գտին այր մի
Կիւրենացի անուն Սիմովն, զնա կալան
33 սպահակ զի բարձցէ զխաչն նորա։ Եւ
եկեալ ի տեղին անուանեալ Գողգոթա,
34 որ է տեղի կառափելոյ, Ետուն նմա
ըմպել գինի ընդ լեղի խառնեալ. եւ
իբրեւ ճաշակեաց, ոչ կամէր ըմպել։
35 Եւ հանեալ զնա ի խաչ՝ բաժանեցին
զհանդերձս նորա վիճակաւ. [1] զի լցցի
բանն որ ասացաւ ի մարգարէէն, Բա-
ժանեցին զհանդերձս իմ յիւրեանս,
ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս
36 արկանէին"։ Եւ նստեալ պահէին զնա։
37 Եւ եդին ի վերայ գլխոյ նորա գրեալ
զվնաս նորա, թէ Այս է Յիսուս, Թա-
38 գաւորն Հրէից։ Յայնժամ հանին ընդ
նմա ի խաչ երկուս աւազակս, մի
յաջմէ նորա եւ մի յահեկէ։
39 Եւ որ անցանէինն՝ հայհոյէին զնա,
40 շարժէին զգլուխս իւրեանց, Եւ ասէին,
Վա՜հ, որ քակէիր զտաճարն եւ զերիս
աւուրս շինէիր զնա, ապրեցո զքեզ.
թէ Որդի ես Աստուծոյ, էջ ի խաչէդ։
41 Նոյնպէս եւ քահանայապետքն ձաղէին
հանդերձ դպրօքն եւ ծերովք եւ ասէին,
42 Զայլս ապրեցոյց, զինքն ոչ կարէ ապ-
րեցուցանել. եթէ թագաւոր է Իսրա-
յէլի, իջցէ այժմ ի խաչէդ, եւ հաւա-
43 տասցուք դմա. Եթէ յուսացաւ յԱստ-
ուած, փրկեսցէ այժմ զդա, եթէ կամի
զդա. քանզի ասաց եթէ Աստուծոյ
44 Որդի եմ։ Զնոյն եւ աւազակքն որ
խաչեալ էին ընդ նմա՝ նախատէին զնա։
45 Եւ ի վեց ժամէ աւուրն խաւար ե-
ղեւ ի վերայ ամենայն երկրի մինչեւ
46 ցինն ժամ։ Եւ զինն ժամաւն գոչեաց
Յիսուս ի ձայն մեծ եւ ասէ, Էլի, Էլի,
լամա սաբաքթանի. այսինքն է, Աս-
տուած իմ, Աստուած իմ, ընդէ՞ր թո-
47 ղեր զիս։ Ոմանք յայնցանէ որ անդն
կային՝ իբրեւ լուան, ասէին, Զեղիա
48 կարդայ դա։ Եւ վաղվաղակի ընթա-
ցաւ մի ոմն ի նոցանէ, առ սպունգ լի
քացախով, հարեալ յեղեգան՝ ետ ըմպել
49 նմա։ Եւ կէսքն ասէին, Թող, տեսցուք
եթէ գա՞յ Եղիա փրկել զդա։
50 Եւ Յիսուս դարձեալ աղաղակեաց
ի ձայն մեծ եւ արձակեաց զոգին։
51 Եւ ահա վարագոյր տաճարին ցելաւ
յերկուս ի վերուստ մինչեւ ի վայր, եւ
երկիր շարժեցաւ, եւ վէմք պատառե-
52 ցան։ Եւ գերեզմանք բացան եւ բա-
զում մարմինք ննջեցելոց սրբոց յար-
53 եան։ Եւ ելեալ ի գերեզմանաց յետ
յարութեանն նորա, մտին ի քաղաքն
սուրբ եւ երեւեցան բազմաց։
54 Իսկ հարիւրապետն եւ որ ընդ նմա
պահէին զՅիսուս՝ իբրեւ տեսին զշար-
ժումնն եւ զեղելոցն, երկեան յոյժ եւ
ասեն, Արդարեւ Աստուծոյ Որդի էր
սա։

---

[1] Յոմանս պակասի.

55 Էին անդ կանայք բազումք, կային
ի հեռաստանէ եւ հայէին, որք եկին
զկնի Յիսուսի ի Գալիլէէ պաշտել զնա.
56 Յորս էր Մարիամ Մագդաղենացի, եւ
Մարիամ՝ Յակովբայ եւ Յովսեայ մայր,
եւ մայր որդւոցն Զեբեդեայ։
57 Եւ իբրեւ երեկոյ եղեւ, եկն այր մի
մեծատուն յԱրիմաթեայ որում անուն
էր Յովսէփ, որ եւ աշակերտեցաւ իսկ
58 Յիսուսի։ Սա մատուցեալ առ Պիղա-
տոս՝ խնդրեաց զմարմինն Յիսուսի.
յայնժամ Պիղատոս հրամայեաց տալ
59 զմարմինն։ Եւ առեալ զմարմինն Յով-
60 սէփ՝ պատեաց սուրբ կտաւովք, Եւ եդ
ի նոր գերեզմանի զոր փորեաց ի վիմի.
եւ թաւալեցուցեալ կափարիչ դրան
61 գերեզմանին վէմ մի մեծ՝ գնաց։ Անդ
էր Մարիամ Մագդաղենացի եւ միւս
Մարիամն, նստէին հանդէպ գերեզ-
մանին։
62 Եւ ի վաղիւ անդր որ է յետ ուրբա-
թուն, ժողովեցան քահանայապետքն
63 եւ փարիսեցիքն առ Պիղատոս, Եւ ա-
սեն, Տէր, յիշեցաք զի մոլորեցուցիչն
այն ասէր մինչ կենդանին էր, թէ Յետ
64 երից աւուրց յառնեմ. Արդ հրամայեա
զգուշանալ գերեզմանին մինչեւ ցերիս
աւուրս, գուցէ եկեալ աշակերտքն զի-
շերի՝ գողանայցեն զնա, եւ ասիցեն
ժողովրդեանն թէ Յարեաւ ի մեռելոց.
եւ լինիցի յետին մոլորութիւնն չար
65 քան զառաջինն։ Ասէ ցնոսա Պիղատոս,
Ունիք զզօրականս, երթայք, զգուշա-
66 ցարուք որպէս եւ գիտէք։ Եւ նոքա
երթեալ զգուշացան գերեզմանին, եւ
կնքեցին զվէմն հանդերձ զօրականօքն։

## ԳԼ. ԻԸ

1 Եւ յերեկոյի շաբաթուն յորում լու-
սանայր միաշաբաթին, եկն Մարիամ
Մագդաղենացի եւ միւս Մարիամն տե-
2 սանել զգերեզմանն։ Եւ ահա շարժումն
մեծ եղեւ, զի հրեշտակ Տեառն իջեալ
յերկնից մատուցեալ ի բաց թաւալե-
ցոյց զվէմն ի դրաց անտի, եւ նստէր
3 ի վերայ նորա. Եւ էր տեսիլ նորա
իբրեւ զփայլակն, եւ հանդերձ նորա
4 սպիտակ իբրեւ զձիւն։ Եւ յահէ անտի
նորա խռովեցան սպահապանքն, եւ եղեն
5 իբրեւ զմեռեալս։ Պատասխանի ետ
հրեշտակն եւ ասէ ցկանայսն, Մի՛ եր-
կնչիք դուք, գիտեմ զի զՅիսուս զխա-
6 չեալն խնդրէք. Չէ աստ, քանզի
յարեաւ, որպէս ասացն. եկայք, տե-
7 սէք զտեղին ուր [1]կայր։ Եւ վաղվա-
ղակի երթայք, ասացէք աշակերտացն
նորա թէ [2]Յարեաւ. եւ ահա յառա-
ջանայ քան զձեզ ի Գալիլեա, անդ տե-
8 սանիցէք զնա. ահա ասացի ձեզ։ Եւ
ելեալ վաղվաղակի ի գերեզմանէ անտի
ահիւ եւ խնդութեամբ բազմաւ՝ ըն-
թանային պատմել աշակերտացն։
9 Եւ ահա պատահեաց նոցա Յիսուս
եւ ասէ, Ո՛ղջ էք. եւ նոքա մատու-
ցեալ կալան զոտս նորա եւ երկիր պա-
10 գին նմա։ Յայնժամ ասէ ցնոսա Յի-
սուս, Մի՛ երկնչիք, երթայք, ասացէք
եղբարցն իմոց զի երթիցեն ի Գալիլեա
եւ անդ տեսցեն զիս։
11 Իբրեւ նոքա գնացին, ահա ոմանք
ի զօրականացն եկին ի քաղաքն, եւ
պատմեցին քահանայապետիցն զամե-
12 նայն որ ինչ եղեւն։ Եւ նոքա ժողով-
եալ հանդերձ ծերովքն, խորհուրդ առ-
եալ՝ արծաթ յոյժ ետուն զօրականացն,
13 Եւ ասեն, Ասասջիք եթէ Աշակերտքն
նորա եկեալ գիշերի գողացան զնա,
14 մինչ մեք ի քուն էաք։ Եւ եթէ լուր
լիցի այդ առ դատաւորն, մեք հաճեսցուք
զնա եւ զձեզ անհոգս արասցուք։
15 Եւ նոցա առեալ զարծաթն, արարին
որպէս ուսանն. եւ ել համբաւս այս
ի Հրէից մինչեւ ցայսօր։
16 Իսկ մետասան աշակերտքն գնացին
ի Գալիլեա ի լեառնն՝ ուր ժամադիր
17 եղեւ նոցա Յիսուս։ Իբրեւ տեսին զնա,
երկիր պագին նմա, եւ ոմանք յեր-
18 կուացան։ Եւ մատուցեալ Յիսուս խօ-
սեցաւ ընդ նոսա եւ ասէ, Տուաւ ինձ
ամենայն իշխանութիւն յերկինս եւ
յերկրի. [3]որպէս առաքեաց զիս Հայր,
19 եւ ես առաքեմ զձեզ։՝ Գնացէք այսու-
հետեւ, աշակերտեցէք զամենայն հե-
թանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր
20 եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ։ Ուսու-
ցէք նոցա պահել զամենայն որ ինչ
պատուիրեցի ձեզ. եւ ահաւասիկ ես
ընդ ձեզ եմ զամենայն աւուրս, մինչեւ
ի կատարած աշխարհի։

---

[1] Բազում, կայր Տէրն
[2] Բազում, Յարեաւ ի մեռելոց
[3] Ի Յոյնին պակասէ

# ԳԼՈՒԽՔ ՄԱՐԿՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՐԿՈՍԻ

## ԳԼՈՒԽ Ա

1 ՍԿԻԶԲՆ աւետարանի Յիսուսի Քրիս-
2 տոսի, Որդւոյ Աստուծոյ։ Որպէս եւ
գրեալ է ի մարգարէս, Ահաւասիկ ես
առաքեմ զհրեշտակ իմ առաջի քո, որ
հանդերձեսցէ զճանապարհս քո առաջի
3 քո։ Ձայն բարբառոյ յանապատի, Պատ-
րաստ արարէք զճանապարհ Տեառն,
եւ ուղիղս արարէք զշաւիղս նորա։
4 Եւ եղեւ զի Յովհաննէս մկրտէր յա-
նապատի, եւ քարոզէր մկրտութիւն
ապաշխարութեան ի թողութիւն մե-
5 ղաց։ Եւ երթայր առ նա ամենայն աշ-
խարհն Հրէաստանի եւ Երուսաղեմա-
ցիք ամենեքեան, եւ մկրտէին ի նմա-
նէ ի Յորդանան գետ՝ խոստովանեալ
6 զմեղս իւրեանց։ Եւ էր Յովհաննէս
զգեցեալ ստեւ ուղտու, եւ գօտի մաշ-
կեղէն ընդ մէջ իւր. եւ կերակուր նո-
7 րա մարախ եւ մեղր վայրենի։ Քարո-
զէր եւ ասէր, Գայ զօրագոյնն քան
զիս զկնի իմ, որում չեմ բաւական
խոնարհել լուծանել զխրացս կօշկաց
8 նորա։ Ես մկրտեցի զձեզ ջրով, եւ նա
մկրտեսցէ զձեզ Հոգւով Սրբով։
9 Եւ եղեւ յաւուրսն յայնոսիկ եկն
Յիսուս ի Նազարեթէ Գալիլեացւոց,
եւ մկրտեցաւ ի Յովհաննէ ի Յորդա-
10 նան։ Եւ նոյնժամայն ընդ վերանալ
ի ջրոցն ետես ցելեալ զերկինս, եւ
զՀոգին [1]Աստուծոյ իբրեւ զաղաւնի
11 զի իջանէր ի վերայ նորա։ Ձայն եղեւ
յերկնից եւ ասէ, Դու ես Որդի իմ սի-
12 րելի, ընդ քեզ հաճեցայ։ Եւ նոյնժա-
13 մայն Հոգին հանէ զնա յանապատ։ Եւ
էր նա անդ զաւուրս քառասուն փոր-
ձեալ ի Սատանայէ, եւ էր ընդ գազանս.
եւ հրեշտակք պաշտէին զնա։
14 ԲԲ. Եւ յետ մատնելոյն Յովհաննու
եկն Յիսուս ի Գալիլեա. քարոզէր զա-
15 ւետարանն Աստուծոյ, Եւ ասէր թէ
Կատարեալ է ժամանակ, եւ հասեալ է
արքայութիւնն Աստուծոյ, ապաշխա-
րեցէք եւ հաւատացէք յաւետարանն։
16 Իբրեւ անցանէր առ ծովեզերբն Գա-
լիլեացւոց, ետես զՍիմովն եւ զԱնդրէ-
աս զեղբայր Սիմովնի, զի արկեալ էր
նոցա ուռկանս ի ծով, քանզի ձկնորսք
17 էին. Եւ ասէ ցնոսա Յիսուս, Եկայք
զկնի իմ եւ արարից զձեզ լինել որ-
18 սորդս մարդկան։ Եւ վաղվաղակի թող-
եալ զուռկանսն՝ գնացին զհետ նորա։
19 Եւ մատուցեալ անտի սակաւիկ մի յա-
ռաջ՝ ետես զՅակովբոս Զեբեդեայ եւ
զՅովհաննէս զեղբայր նորա, եւ զնոսա
ի նաւին մինչ կազմէին զուռկանս։
20 Եւ կոչեաց [2]զնոսա, եւ վաղվաղակի՝
թողեալ զհայրն իւրեանց զԶեբեդիոս
ի նաւին վարձկանօքն հանդերձ, գնա-
ցին զհետ նորա։
21 ԲԳ. Եւ մտանեն ի Կափառնայում,
եւ խսկ եւ խսկ ի շաբաթուն մտեալ ի
22 ժողովուրդն՝ ուսուցանէր զնոսա։ Եւ
զարմանային ընդ վարդապետութիւն
նորա, զի ուսուցանէր զնոսա իբրեւ
իշխանութեամբ, եւ ոչ՝ որպէս դպիրքն։
23 Եւ էր ի ժողովրդեանն նոցա այր մի,
յորում այս պիղծ գոյր ի նմա. որ ա-
24 ղաղակեաց եւ ասէ, Թոյլ տուր, զի՞
կայ մեր եւ քո, Յիսուս Նազովրեցի,
եկիր կորուսանե՞լ զմեզ. գիտեմք զքեզ,
25 ով ես, Սուրբդ Աստուծոյ։ Սաստեաց
ի նա Յիսուս եւ ասէ, Կարկեաց եւ ել
26 ի դմանէ։ Եւ զարկոյց զնա այսն պիղծ,
եւ աղաղակեաց ի ձայն մեծ եւ ել ի
27 նմանէ։ Եւ զարմացան ամենեքին, մին-
չեւ հծծել ընդ միմեանս եւ ասել, Զի՞նչ
է այս նոր վարդապետութիւնս, զի
իշխանութեամբ եւ այսոց պղծոց սաս-
28 տէ, եւ հնազանդին սմա։ Եւ ել լուր
նորա ընդ ամենայն կողմն Գալիլեա-
ցւոց։
29 Եւ վաղվաղակի ելեալ ի ժողովրդե-

---

[1] Ի Յ[illegible] գոլով

[2] Բ[illegible], զնոսա վաղվաղակի, եւ

*նէն՝ եկն ի տուն Սիմովնի եւ Անդրեայ*
*Յակովբաւ եւ Յովհաննու հանդերձ ։*
30 *Եւ զոքանչ Սիմովնի դնէր ջերմացեալ,*
*եւ վաղվաղակի ասեն ցնա վասն նորա ։*
31 *Եւ մատուցեալ յարոյց զնա՝ կալեալ*
*զձեռանէ նորա . եւ եթող զնա տենդն,*
*եւ սպասէր զնոսա ։*
32 *Եւ իբրեւ երեկոյ եղեւ ի մտանել*
*արեգականն, բերէին առ նա զամենայն*
33 *հիւանդս եւ զդիւահարս . Եւ էր ամե-*
*նայն քաղաքն ժողովեալ առ դրունսն .*
34 *Եւ բժշկեաց բազում հիւանդս ի պէս-*
*պէս ախտից, եւ դեւս բազումս եհան .*
*եւ ոչ տայր խօսել դիւացն, զի գիտէին*
*զնա .*[1]*թէ Քրիստոսն է"։*
35 *ԲԴ. Եւ ընդ այգն ընդ առաւօտն յա-*
*րուցեալ ել եւ գնաց յանապատ տեղի,*
36 *եւ անդ կայր յաղօթս ։ Եւ գնաց զհետ*
*նորա Սիմովն եւ որ ընդ նմայն էին ։*
37 *Եւ իբրեւ գտին զնա, ասեն ցնա թէ*
38 *Ամենեքին խնդրեն զքեզ ։ Եւ ասէ ցնո-*
*սա, Եկայք երթիցուք եւ յայլ մօտա-*
*ւոր գեղաքաղաքսն, զի եւ անդ քա-*
39 *րոզեցից, զի յայս իսկ եկեալ եմ։ Եւ*
*քարոզէր ի ժողովուրդս նոցա ընդ ա-*
*մենայն Գալիլեացիս, եւ դեւս հանէր ։*
40 *Գայ առ նա բորոտ մի, աղաչէր, ի*
*ծունր իջանէր եւ ասէր, Տէր, եթէ*
41 *կամիս, կարող ես զիս սրբել։ Իսկ Յի-*
*սուս գթացեալ ձգեաց զձեռն, մերձե-*
*ցաւ ի նա եւ ասէ ցնա, Կամիմ, սրբե-*
42 *աց ։ Եւ իբրեւ ասացն ցնա, վաղվա-*
*ղակի գնաց ի նմանէ բորոտութիւնն,*
43 *եւ սրբեցաւ ։ Եւ սաստեալ նմա՝ եհան*
*զնա արտաքս վաղվաղակի, եւ ասէ*
44 *ցնա, Զգոյշ լեր, մի՛ ումեք ինչ ասի-*
*ցես . այլ երթ, ցոյց զքեզ քահանային,*
*եւ մատո վասն սրբութեան քո պատա-*
*րագ, զոր հրամայեաց Մովսէս ի վկա-*
45 *յութիւն նոցա ։ Եւ նա ելեալ սկսաւ*
*քարոզել յոյժ եւ հռչակ հարկանել*
*զբանն, մինչ ոչ եւս կարող լինել նմա*
*յայտնապէս ի քաղաք մտանել, այլ ար-*
*տաքոյ յանապատ տեղիս էր . եւ գային*
*առ նա յամենայն կողմանց ։*

ԳԼ. Բ

1 ԲԵ. Եւ *մտեալ դարձեալ ի Կափառ-*
2 *նայում յետ աւուրց, Լուր եղեւ եթէ*
*ի տան է . եւ ժողովեցան բազումք,*
*մինչեւ տեղի եւս ոչ լինել եւ ոչ առ*
3 *դրանն . եւ խօսէր նոցա զբանն ։ Եւ*
*գային առ նա, բերէին անդամալոյծ մի*
4 *բարձեալ ի չորից ։ Եւ իբրեւ ոչ կա-*
*րէին մերձենալ առ նա յամբոխէ անտի,*
*քակեցին զյարկն ուր էր Յիսուս, եւ*
*բացեալ զառաստաղն՝ իջուցին զմա-*
5 *հիճսն յորում կայր անդամալոյծն ։ Եւ*
*տեսեալ Յիսուսի զհաւատս նոցա, ասէ*
*ցանդամալոյծն, Որդեակ, թողեալ լի-*
6 *ցին քեզ մեղք քո ։ Եւ էին ոմանք ի*
*դպրաց անտի որ անդ նստէին . եւ խոր-*
7 *հէին ի սիրտս իւրեանց, Զի՞նչ է այս*
*որ խօսի սա զհայհոյութիւնս . ո՞վ կա-*
*րէ թողուլ զմեղս, եթէ ոչ մի Աստ-*
8 *ուած ։ Եւ գիտաց Յիսուս յոգի իւր*
*թէ այնպէս խորհին ի սիրտս իւրեանց,*
*եւ ասէ, Զի՞ խորհիք զայդ ի սիրտս*
9 *ձեր ։ Զի՞նչ դիւրին է, ասե՞լ ցանդա-*
*մալոյծն՝ Թողեալ լիցին քեզ մեղք քո,*
*եթէ՝ ասել, Արի, առ զմահիճս քո եւ*
10 *երթ*[2]*ի տուն քո"։ Այլ զի գիտասջիք*
*եթէ իշխանութիւն ունի Որդի մարդոյ*
*ի վերայ երկրի թողուլ զմեղս, (ասէ*
11 *ցանդամալոյծն,) Քեզ ասեմ, Արի, առ*
12 *զմահիճս քո եւ երթ ի տուն քո ։ Եւ*
*յարեաւ, եւ վաղվաղակի առեալ զմա-*
*հիճսն, ել առաջի ամենեցուն, մինչեւ*
*զարմանալ ամենեցուն, եւ փառաւոր*
*առնել զԱստուած եւ ասել թէ Այսպիսի*
*ինչ երբեք ոչ տեսաք ։*
13 ԲԶ. *Եւ ել դարձեալ ի ծովեզրն, եւ*
*ամենայն ժողովուրդն գայր առ նա .*
14 *եւ ուսուցանէր զնոսա ։ Եւ մինչդեռ*
*անցանէր, ետես զՂեւի Ալփեայ զի*
*նստէր ի մաքսաւորութեան, եւ ասէ*
*ցնա, Եկ զկնի իմ . եւ յարուցեալ գնաց*
15 *զկնի նորա ։ Եւ եղեւ ի բազմելն նորա*
*ի տան նորա, եւ բազում մաքսաւորք*
*եւ մեղաւորք բազմեալ էին ընդ Յիսու-*
*սի եւ ընդ աշակերտսն նորա . քանզի*
*էին բազումք որ երթային զհետ նորա ։*
16 *Իսկ դպիրքն եւ փարիսեցիք իբրեւ տե-*
*սին թէ ուտէ ընդ մաքսաւորս եւ ընդ*
*մեղաւորս, ասեն ցաշակերտսն նորա,*
*Զի՞ է զի ընդ մեղաւորս եւ ընդ մաք-*
17 *սաւորս ուտէ*[1]*եւ ըմպէ"։ Իբրեւ լուաւ*
*Յիսուս, ասէ ցնոսա, Ոչինչ է պիտոյ*
*բժիշկ ողջոց, այլ հիւանդաց . եւ ոչ*

[1] Յոմանս պակասէ

[2] ի Բազումս պակասէ

եկի կոչել զարդարս, այլ՝ զմեղաւորս։
18 Եւ էին աշակերտքն Յովհաննու եւ
[1]փարիսեցիքն ի պահս. գան եւ ասեն
ցնա, Ընդէ՞ր աշակերտքն Յովհաննու
եւ [2]փարիսեցիքն պահեն, եւ քո աշա-
19 կերտքդ ոչ պահեն։ Եւ ասէ ցնոսա Յի-
սուս, Միթէ մա՞րթ ինչ իցէ որդւոց
առագաստի, մինչ ընդ նոսա իցէ փե-
սայն, պահել. ցորքան ընդ իւրեանս
ունիցին զփեսայն, ոչ է մարթ պահել։
20 Այլ եկեսցեն աւուրք, յորժամ վերասս-
ցի ի նոցանէ փեսայն, եւ ապա պա-
21 հեսցեն յաւուրն յայնմիկ։ Ոչ ոք կա-
պերտ [3]նոր անթափ արկանէ ի վերայ
հնացեալ ձորձոյ. ապա թէ ոչ՝ առնու
լրութեամբն իւրով նորն ի հնոյ անտի,
22 եւ չար եւս պատառումն լինի։ Եւ ոչ
ոք արկանէ գինի նոր ի տիկս հինս.
ապա թէ ոչ՝ պայթուցանէ [4]գինին
զտիկսն, գինին հեղու եւ տիկքն կո-
րընչին. այլ գինի նոր ի տիկս նորս
արկանելի է։
23 ԲԷ. Եւ եղեւ նմա ի շաբաթու ան-
ցանել ընդ արտորայս, եւ աշակերտքն
ի գնալն իւրեանց սկսան հասկ կորզել
24 եւ ուտել։ Եւ փարիսեցիքն ասեն ցնա,
Տես, զի՞նչ գործեն աշակերտքն քո
25 ի շաբաթուս, զոր չէ արժան։ Եւ ասէ
ցնոսա Յիսուս, Ո՞չ երբեք իցէ ըն-
թերցեալ ձեր զոր արարն Դաւիթ, յոր-
ժամ պիտոյն եղեւ, եւ քաղցեաւ նա
26 եւ որ ընդ նմայն էին։ Զիա՞րդ եմուտ
ի տունն Աստուծոյ առ Աբիաթարաւ
քահանայապետիւ, եւ զհացսն զառա-
ջաւորութեան եկեր, եւ ետ եւ այնո-
ցիկ որ ընդ նմայն էին, զոր ոչ էր օրէն
27 ուտել, բայց միայն քահանայիցն։ Եւ
ասէ ցնոսա, Շաբաթ վասն մարդոյ
եղեւ, եւ ոչ եթէ մարդ վասն շաբա-
28 թու։ Ապա ուրեմն տէր է Որդի մար-
դոյ եւ շաբաթու։

ԳԼ. Գ

1 Եւ եմուտ միւսանգամ ի ժողովուրդն,
եւ էր անդ այր մի որոյ ձեռն գօսա-
2 ցեալ էր։ Եւ սպասէին նմա եթէ բժըշ-
կեսցէ զնա ի շաբաթուն, զի չարա-
3 խօսեսցեն զնմանէ։ Եւ ասէ ցայրն որոյ
ձեռնն գօսացեալ էր, Արի, անց ի մէջ։
4 Եւ ասէ ցնոսա, Զի՞նչ արժան է ի շա-
բաթու, բարի՞ ինչ գործել եթէ չար
առնել, ոգի մի ապրեցուցանե՞լ եթէ
5 կորուսանել. եւ նոքա լռեցին։ Եւ հա-
յեցեալ Յիսուսի զնոքօք ըստ ցասմամբ,
տրտմեալ վասն կուրութեան սրտից
նոցա՝ ասէ ցայրն, Ձգեա զձեռն քո.
եւ նա ձգեաց, եւ ողջացաւ ձեռն նորա։
6 ԳԿ. Եւ ելեալ արտաքս վաղվաղակի
փարիսեցիքն Հերովդիանոսօքն համ-
դերձ, խորհուրդ առնէին վասն նորա
թէ զիարդ կորուսցեն զնա։
7 Իսկ Յիսուս աշակերտօքն իւրովք
գնաց ի ծովեզրն. եւ բազում ժողո-
վուրդ ի Գալիլեացւոց երթային զհետ
8 նորա, եւ ի Հրէաստանէ, Եւ [5]յԵրու-
սաղեմէ եւ յայնկոյս Յորդանանու եւ
որք ի Տիւրոսէ եւ ի Սիդոնէ, բազում
ժողովուրդ իբրեւ լսէին որչափ ինչ
9 առնէր՝ գային առ նա։ Եւ ասէ ցաշա-
կերտսն իւր զի նաւակ մի պատրաս-
տական կայցէ նմա վասն ամբոխին,
10 զի մի՛ նեղեսցեն զնա։ Բանզի զբա-
զումս բժշկեաց. մինչեւ գալ խռնել
զնովաւ, զի մերձեսցին առ նա որք
11 ունէին ախտս ինչ։ Եւ այսք պղծք
յորժամ տեսանէին զնա, անկանէին ա-
ռաջի նորա, աղաղակէին եւ ասէին թէ
12 Դու ես Որդին Աստուծոյ. եւ նա յոյժ
սաստէր նոցա, զի մի՛ յայտնի առնի-
ցեն զնա։
13 ԳԲ. Ելանէ ի լեառնն եւ կոչէ առ ինքն
զորս ինքն կամեցաւ, եւ չոգան առ
14 նա։ Եւ արար երկոտասանս զի իցեն
զնովաւ, եւ զի առաքեսցէ զնոսա քա-
15 րոզել, Եւ ունել իշխանութիւն բժըշ-
16 կելոյ զցաւս եւ հանելոյ զդեւս։ Եւ
17 եդ անուն Սիմովնի՝ Պետրոս, Եւ Յա-
կովբու Զեբեդեայ եւ Յովհաննու եղ-
բօրն Յակովբայ՝ եդ նոցա անուանս
Բանէրեգէս, որ է Որդիք որոտման.
18 Եւ զԱնդրէաս, եւ զՓիլիպպոս, եւ
զԲարթողոմէոս, եւ զՄատթէոս զմաք-
սաւորն, եւ զԹովմաս, եւ զՅակովբոս
Ալփեայ, եւ զԹադէոս, եւ զՍիմովն
19 Կանանացի, Եւ զՅուդա Իսկարիով-
տացի, որ եւ մատնեացն զնա։
20 ԳԳ. Գան ի տուն, եւ գայ միւսանգամ

[1]Ոմանք, փարիսեցւոցն [2]Ոմանք, փարիսեց-ւոցն, այլք՝ աշակերտք փարիսեցւոցն
[3]Ի Յունին պակասէ, որպէս եւ յոմանս է Հայ. ձե-ռագրաց [4]Ոմանք, գինին նոր
[5]Բազումք, յԵրուսաղեմէ եւ յԵդոմայ

ընդ նոսա ժողովուրդն, մինչ զի եւ
21 հաց եւս ոչ ժամանել ուտել նոցա ։ Եւ
իբրեւ լուան որ իւրքն էին՝ ելին ունել
զնա, զի համարէին թէ մոլեգնեալ իցէ։
22 Եւ դպիրքն որ յԵրուսաղեմէ իջեալ
էին՝ ասէին թէ Բէեղզեբուղ գոյ ի դմա,
եւ իշխանաւ դիւացն հանէ դա զդեւս ։
23 Եւ կոչեցեալ զնոսա առ ինքն՝ առակօք
խօսէր ընդ նոսա, Զիա՞րդ կարէ Սա-
24 տանայ զՍատանայ հանել ։ Եւ արդ
եթէ թագաւորութիւն յանձն իւր բա-
ժանեսցի, ոչ կարէ կալ թագաւորու-
25 թիւնն այն ։ Եւ եթէ տուն յանձն իւր
26 բաժանեսցի, ոչ կարէ կալ տունն ։ Եւ
եթէ Սատանայ ի վերայ անձին իւրոյ
յարեաւ եւ բաժանեալ իցէ, ոչ կարէ
27 կալ, այլ վախճանեալ է ։ Այլ ոչ ոք
կարէ զկարասի հզօրի, մտեալ ի տուն
նորա, աւար հարկանել, եթէ ոչ նախ
զհզօրն կապիցէ, եւ ապա զտունն նորա
28 աւար հարկանիցէ ։ Ամէն ասեմ ձեզ
զի Ամենայն թողցի որդւոց մարդկան
մեղք եւ հայհոյութիւնք, որչափ եւ
29 հայհոյեսցեն. Բայց որ հայհոյեսցէ զՀո-
գին Սուրբ, ոչ ունիցի թողութիւն
յաւիտեան, այլ պարտապան լիցի յա-
30 ւիտենից մեղաց. Զի ասէին թէ Այս
պիղծ գոյ ի նմա ։
31 ԳԴ. Գան եղբարքն եւ մայր նորա, եւ
արտաքոյ կացեալ՝ յղեցին եւ կոչէին
32 զնա ։ Եւ անդ ժողովուրդն շուրջ զնո-
վաւ նստէր. եւ իբրեւ ասացին ցնա,
Ահաւասիկ մայր քո եւ եղբարք քո կան
33 արտաքոյ եւ խնդրեն զքեզ, Պատաս-
խանի ետ նոցա եւ ասէ, Ո՞վ է իմ
34 մայր կամ եղբարք ։ Հայեցաւ շուրջ
զիւրեւ [1]յաշակերտսն զի նստէին", եւ
ասէ, Ահաւասիկ մայր իմ եւ եղբարք
35 իմ. Զի որ առնիցէ զկամս Աստուծոյ՝
նա է իմ եղբայր եւ քոյր եւ մայր ։

ԳԼ. Դ

1 ԳԵ. Դարձեալ սկսաւ ուսուցանել
առ ծովեզերբն, եւ խռնեցան զնովաւ
ժողովուրդք բազումք, մինչեւ ի նաւ
մտանել նմա եւ նստել ի ծովուն, եւ ա-
մենայն ժողովուրդն զծովեզերբն զցա-
2 մաքն ունէին ։ Եւ ուսուցանէր զնոսա
առակօք բազում ինչ, եւ ասէր նոցա
3 ի վարդապետութեան իւրում, Լուարուք.
ահաւասիկ ել սերմանող սերմանել ։
4 Եւ եղեւ ի սերմանելն, ոմն անկաւ առ
ճանապարհաւ, եւ [2]եկն թռչուն եւ
5 եկեր զնա" ։ Եւ այլն անկաւ յապառա-
ժի, ուր ոչ գոյր հող բազում. եւ վաղ-
վաղակի բուսաւ, քանզի ոչ գոյր հիւթ
6 երկրին. Եւ յորժամ ծագեաց արեւ,
ջեռաւ, եւ զի ոչ գոյին արմատք, ցա-
7 մաքեցաւ ։ Եւ այլն անկաւ ի մէջ փշոց.
ելին փուշքն եւ հեղձուցին զնա, եւ
8 պտուղ ոչ ետ ։ Եւ այլն անկաւ յեր-
կիր բարւոք, եւ ելեալ աճեցեալ տայր
պտուղ, եւ բերէր ընդ միոյ երեսուն
եւ ընդ միոյ վաթսուն եւ ընդ միոյ
9 հարեւր ։ Եւ ասէր, Որ ունիցի ականջս
լսելոյ՝ լուիցէ ։
10 ԳԶ. Եւ իբրեւ եղեւ առանձինն, հար-
ցին ցնա որ զնովաւն էին աշակեր-
11 տօքն հանդերձ զառակսն ։ Եւ ասէ ցնո-
սա, Ձեզ տուեալ է գիտել զխորհուրդս
արքայութեան Աստուծոյ, բայց նոցա
որ արտաքինքն են՝ ամենայն ինչ ա-
12 ռակօք լինի, Զի տեսանելով տեսցեն
եւ մի՛ տեսցեն, եւ լսելով լուիցեն եւ
մի՛ իմասցին, զի մի՛ երբեք դարձցին
13 եւ թողցի նոցա ։ Եւ ասէ ցնոսա, Ո՞չ
գիտէք զառակս զայս, եւ զիա՞րդ զա-
14 մենայն առակսն գիտիցէք ։ Որ սեր-
15 մանէն՝ զբանն սերմանէ ։ Եւ նոքա են
որ առ ճանապարհաւն՝ ուր բանն սեր-
մանի, եւ յորժամ լսեն զնա, գայ Սա-
տանայ եւ հանէ զբանն սերմանեալ ի
16 սիրտս նոցա ։ Եւ նոքա են որ յապա-
ռաժին սերմանեցան, որք յորժամ լսի-
ցեն զբանն, վաղվաղակի խնդութեամբ
17 ընդունին. Եւ զի ոչ ունին արմատս
յանձինս, այլ առ ժամանակ մի են,
ապա ի հասանել նեղութեան կամ հա-
լածման վասն բանին՝ վաղվաղակի գայ-
18 թակղին ։ Իսկ որ ի մէջ փշոցն սեր-
մանեցան՝ նոքա են, որ իբրեւ զբանն
19 լսեն, Եւ հոգք աշխարհիս եւ պատ-
րանք [3]մեծութեան մտանեն եւ հեղ-
ձուցանեն զբանն եւ անպտուղ լինի ։
20 Եւ նոքա են որ յերկիրն բարւոք սեր-
մանեցան, որք լսեն զբանն եւ ընդու-
նին եւ տան պտուղ, ընդ միոյ երե-

[1] Բաղդատ., յորս նստէին

[2] Ի Յունն., «մանէ՝ եկին թռչունք եւ կերան զնա. այլք՝ եկին թռչունք երկնից եւ կերան զնա
[3] Բաղդատ., մեծութեան եւ ցանկութիւնք այլոց իրաց

սուն եւ ընդ միոյ վաթսուն եւ ընդ
միոյ հարեւր ։
21 ԳԷ․ Եւ ասէ ցնոսա, Միթէ զա՞յ ճրագ
զի ընդ գրուանաւ դնիցի կամ ընդ
մահճօք․ ո՞չ ապաքէն ի վերայ աշտա-
22 նակի դնիցի ։ Զի չէ ինչ ի ծածուկ որ
թէ ոչ յայտնեսցի, եւ ոչ եղեւ ինչ
23 գաղտնի՝ եթէ ոչ ի յայտ գայցէ ։ Եթէ
24 ոք ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ ։ Եւ
ասէ ցնոսա, Տեսէք զինչ լսէքդ, եւ
յաւելցի ձեզ որոց լսէքդ․ որով չափով
25 չափէք, նովին չափեսցի ձեզ ։ Որ ոք
ունիցի՝ տացի նմա․ եւ որ ոչն ունիցի,
եւ զոր ունին՝ բարձցի ի նմանէ ։
26 ԴԿ․ Եւ ասէր, Այսպէս է արքայու-
թիւն Աստուծոյ, որպէս զի այր մի ար-
27 կանիցէ սերմանիս յերկիր․ Եւ ննջիցէ
եւ յառնիցէ զցայգ եւ զցերեկ, եւ սեր-
մանիքն բուսանիցին եւ աճիցեն․ եւ
28 նա ոչ գիտէ Թէ երկիրն ինքնին բերէ
զպտուղ․ նախ զխոտն եւ ապա զհասկն,
եւ ապա զցորեանն ատոք ի հասկին ։
29 Այլ յորժամ տայցէ զպտուղն, վաղվա-
ղակի առաքի մանգաղ, զի հասեալ են
30 հունձք ։ Եւ ասէր, Ո՞ւմ նմանեցուս-
ցուք զարքայութիւնն Աստուծոյ, կամ
որո՞վ առակաւ առակեսցուք զնա ։
31 Որպէս հատն մանանխոյ որ յորժամ
սերմանիցի յերկրի, փոքրագոյն է քան
զամենայն սերմանիս որ են յերկրի,
32 Եւ յորժամ սերմանիցի, բուսանի եւ
լինի մեծ քան զամենայն բանջար, եւ
արձակէ ոստս մեծամեծս, մինչեւ բա-
ւական լինել ընդ հովանեաւ նորա
33 թռչնոց երկնից բնակել ։ Եւ այնպիսի
առակօք խօսէր ընդ նոսա զբանն, որ-
34 պէս կարող լինէին լսել․ Եւ առանց
առակի ոչինչ խօսէր ընդ նոսա, բայց
առանձինն աշակերտացն իւրոց մեկնէր
զամենայն ։
35 ԴԲ․ Եւ ասէ ցնոսա յաւուրն յայնմիկ
իբրեւ ընդ երեկս լինէր, Եկայք անց-
36 ցուք յայն կոզմն ։ Թողուն զժողո-
վուրդն, եւ առնուն զնա նաւաւն հան-
դերձ, եւ զայլ եւս նաւսն որ էին ընդ
37 նմա ։ Եւ լինէր մրրիկ մեծ հողմոյ, եւ
զալիսն ի նաւն գեղոյր, մինչ դրեթէ
38 լի իսկ լինել ։ Եւ ինքն ննջէր ի խելս
նաւին ի վերայ բարձի․ զարթուցանէին
զնա եւ ասէին, Վարդապետ, ոչի՞նչ է
39 քեզ փոյթ, զի կորնչիմք աւասիկ ։ Եւ
զարթուցեալ սաստեաց հողմոյն եւ ծո-
վուն, ասէ, Դադարեա, կարկեաց․ եւ
դադարեաց հողմն եւ եղեւ խաղաղու-
40 թիւն մեծ ։ Եւ ասէ ցնոսա, Ընդէ՞ր
այդպէս վատասիրտք էք, չե՞ւ եւս ու-
նիք հաւատս․ եւ երկեան երկեւղ մեծ
եւ ասէին ցմիմեանս, Ո՞ ոք արդեւք
իցէ սա, զի եւ հողմ եւ ծով հնազան-
դին սմա ։

Գլ․ Ե

1 Եւ եկն յայնկոյս ծովուն՝ յաշխարհն
2 [1]Գերգեսացւոց ։ Եւ ընդ ելանելն նորա
ի նաւէ անտի, պատահեաց նմա այր մի
ի գերեզմանացն զոր ունէր այս պիղծ․
3 Որոյ եւ բնակութիւն իւր իսկ ի գե-
րեզմանս էր․ եւ ոչ շղթայիւք ոք եւս
4 կարէր կապել զնա, Վասն բազում ան-
գամ ոտնակապօք եւ շղթայիւք կա-
պելոյ եւ խզելոյ ի նմանէ զշղթայսն,
եւ զոտնակապսն խորտակելոյ․ եւ ոչ
5 ոք կարէր պարտել զնա․ Քանզի հա-
նապազ զցայգ եւ զցերեկ ի գերեզմանս
եւ ի լերինս աղաղակէր, եւ կոծէր
6 զանձն իւր քարամբք ։ Իբրեւ ետես զՅի-
սուս ի հեռաստանէ, ընթացաւ եւ եր-
7 կիր եպագ նմա ։ Աղաղակեաց ի ձայն
մեծ եւ ասէ, Զի՞ կայ իմ եւ քո, Յի-
սուս, Որդի Աստուծոյ բարձրելոյ,
երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած, մի՛
8 տանջեր զիս ։ Քանզի ասէր ցնա, Ել,
9 այսդ պիղծ, ի մարդոյ այտի ։ Եւ հար-
ցանէր ցնա թէ Զի՞նչ անուն է քո․
եւ ասէ ցնա, Լէգէոն անուն է իմ,
10 քանզի բազումք եմք ։ Եւ աղաչէին զնա
յոյժ, զի մի՛ առաքեսցէ զնոսա արտաքս
11 քան զաշխարհն ։ Եւ անդ էր առ լե-
րամբն երամակ մի խոզից արօտական
12 մեծ ։ Աղաչեցին զնա ամենայն դեւքն
եւ ասեն, Առաքեա զմեզ ի խոզսն, զի
13 մտցուք ի նոսա ։ Եւ հրամայեաց նոցա․
եւ իբրեւ ելին այսքն պիղծք, մտին
ի խոզսն, եւ դիմեաց երամակն ի դարէ
անտի ի ծովն․ էին իբրեւ երկու հա-
14 զարք, եւ հեղձնուին ի ծովուն ։ Եւ
խոզարածքն փախեան եւ պատմեցին
ի քաղաքին եւ յագարակս․ եւ ելին տե-
15 սանել զինչ իցէ որ գործեցաւն ։ Գան
առ Յիսուս, եւ տեսանեն զդիւահարն
զի նստէր զգեցեալ եւ զգաստացեալ,

[1] Ոմն․, Գադարացւոց

որ ունէր զլէգէոնն, եւ զահի հարան։
16 Եւ պատմեցին նոցա որոց տեսեալն
էր, թէ զի՛նչ եղեւ այսահարին եւ
17 զի՛նչ վասն խոզիցն։ Եւ սկսան աղա-
18 չել զնա գնալ ի սահմանաց նոցա։ Եւ
իբրեւ եմուտ նա ի նաւն, աղաչէր
19 զնա դիւահարն զի ընդ նմա իցէ։ Եւ
Յիսուս ոչ ետ նմա թոյլ, այլ ասէ ցնա,
Երթ ի տուն քո առ ընտանիս քո, եւ
պատմեա նոցա որ ինչ միանգամ Տէր
20 արար քեզ եւ ողորմեցաւ քեզ։ Եւ
չոգաւ եւ սկսաւ քարոզել ի Դեկա-
պոլին զոր ինչ արար նմա Յիսուս,
եւ ամենեքին զարմանային։
21 Դգ. Եւ իբրեւ անց Յիսուս [1]միւս-
անգամ յայն կոյս, ժողովեցաւ առ
նա ժողովուրդ բազում, եւ էր առ
22 ծովեզերբն։ Եւ ահա մի ի ժողովրդա-
պետացն գայր, որում անուն էր Յայ-
րոս, եւ իբրեւ ետես զնա անկաւ առ
23 ոտս նորա. Աղաչէր զնա յոյժ եւ ա-
սէր թէ Դուստր [2]նորա մերձ է ի մահ,
զի եկեալ [3]դնիցէ նմա ձեռն, որպէս
24 զի ապրեսցի եւ կեցցէ։ Եւ գնաց ընդ
նմա. երթայր եւ ժողովուրդ բազում
զհետ նորա եւ նեղէին զնա։
25 Եւ կին մի էր ի տեռատեսութեան
26 արեան զերկոտասան ամ. Եւ յոյժ
վշտացեալ ի բազում բժշկաց, եւ ծա-
խեալ զինչս իւր զամենայն եւ չէր ինչ
օգտեալ, այլ եւս առաւել զայրացեալ։
27 Իբրեւ լուաւ զՅիսուսէ, եկն ի մէջ
ամբոխին յետոյ եւ բուռն եհար զհան-
28 դերձէ նորա. Քանզի խորհէր ի մտի
թէ միայն մերձեցայց ի հանդերձս նո-
29 րա, փրկեցայց։ Եւ վաղվաղակի ցա-
մաքեցաւ աղբեւր արեան նորա. եւ
գիտաց ի մարմին իւր թէ բժշկեցաւ
30 ի տանջանացն։ Եւ անդէն վաղվաղակի
գիտաց Յիսուս յանձն իւր զզօրու-
թիւնն որ ել ի նմանէ, դարձաւ յամ-
բոխն եւ ասէ, Ո՞վ մերձեցաւ ի հան-
31 դերձս իմ։ Եւ ասեն ցնա աշակերտքն,
Տեսանես զի ամբոխդ նեղէ զքեզ, եւ
ասես թէ Ո՞վ մերձեցաւ ի հանդերձս
32 իմ։ Եւ շուրջ հայէր տեսանել թէ ո՛
33 զայն արար։ Եւ կինն զարհուրեալ եւ
դողացեալ [4]վասն որոյ գաղտն արար",
քանզի գիտէր զի՛նչ եղեւ նմա, եկն
անկաւ առաջի նորա, եւ ասաց զա-
34 մենայն իրսն ստուգութեամբ։ Եւ Յի-
սուս ասէ ցնա, Դուստր, հաւատք քո
կեցուցին զքեզ, երթ ի խաղաղութիւն
եւ եղիջիր ողջ ի տանջանաց քոց։
35 Դդ. Մինչդեռ նա զայն խօսէր, գան
ոմանք ի տանէ ժողովրդապետին եւ
ասեն թէ Դուստրն քո մեռաւ, զի՞ եւս
36 աշխատ առնես զվարդապետդ։ Իսկ
Յիսուս իբրեւ լուաւ զբանն ասացեալ,
ասէ ցժողովրդապետն, Մի՛ երկնչիր,
37 բայց միայն հաւատա։ Եւ ոչ զոք եթող
ընդ իւր երթալ, բայց միայն զՊետրոս
եւ զՅակոբոս եւ զՅովհաննէս զեղ-
38 բայրն Յակոբայ։ Գայ ի տուն ժողո-
վրդապետին, եւ տեսանէ ամբոխ յոյժ
39 եւ լալականս եւ աղաղակ յոյժ։ Եւ
մտեալ ի ներքս ասէ ցնոսա, Զի՞ խռով-
եալ էք եւ լայք, մանուկն ոչ է մեռ-
40 եալ, այլ ննջէ։ Եւ ծաղր առնէին զնա.
եւ նորա հանեալ արտաքս զամենես-
եան, առնու ընդ իւր զհայր մանկանն
եւ զմայր եւ զնոսա որ ընդ նմայն
էին, եւ մտանէ ուր դնէր մանուկն։
41 Եւ կալեալ զձեռանէ մանկանն՝ ասէ
ցնա, Տալիթա, կո՛ւմի. որ թարգմա-
42 նի, Աղջիկ դու, քեզ ասեմ, արի։ Եւ
վաղվաղակի յարեաւ աղջիկն եւ գնայր,
քանզի էր ամաց իբրեւ երկոտասանից.
եւ զարմացան մեծաւ զարմանալեօք։
43 Եւ պատուէր տայր նոցա յոյժ, զի մի՛
ոք գիտասցէ զայն. եւ ասաց տալ
նմա ուտել։

## Գլ. Զ

1 Դե. Եւ ել անտի եկն ի գաւառ իւր.
եւ երթային զհետ նորա աշակերտքն
2 իւր։ Եւ եղեւ ի շաբաթուն սկսաւ
ուսուցանել ի ժողովրդեանն. եւ բա-
զումք իբրեւ լսէին`, զարմանային [4]ընդ
վարդապետութիւն նորա" եւ ասէին,
Ուստի՞ է սմա այս, կամ զի՞նչ է ի-
մաստութիւնս որ տուեալ է սմա, զի
զօրութիւնք այսպիսիք ի ձեռաց սորա
3 լինիցին։ Ո՞չ սա է [5]մանուկ հիւսանն
եւ որդին" Մարեմայ, եղբայր Յակով-
բայ եւ Յովսեայ եւ Յուդայի եւ Սի-
մոնի, եւ չիցե՞ն քորք դորա աստ

[1]Բաղդատէ, միւսանգամ նաւաւ
[2]Յոյնն, իմ [3]Յոյնն, դնիցես

[4]ի բաղդատս պակասէ
[5]Բաղդատէ, հիւսնն, որդին

4 առ մեզ. եւ գայթակղէին ի նա։ Եւ
ասէ ցնոսա Յիսուս, Ոչ է մարգարէ
անարգ, բայց եթէ ի գաւառի իւրում
եւ յազգատոհմի եւ ի տան իւրում։
5 Եւ ոչ կարէր անդ եւ ոչ մի ինչ զօ-
րութիւն առնել, բայց սակաւ հիւան-
6 դաց ձեռն եդեալ բժշկէր զնոսա։ Եւ
զարմանայր վասն անհաւատութեան
նոցա։

ԴՁ. Եւ շրջէր շուրջ զգաւառօքն եւ
7 ուսուցանէր։ Եւ կոչեաց առ ինքն
զերկոտասանսն, եւ սկսաւ առաքել
զնոսա երկուս երկուս, եւ տայր նո-
ցա իշխանութիւն ի վերայ այսոց պղծ-
8 ծոց։ Եւ պատուիրեաց նոցա զի մի՛
ինչ բարձցեն ի ճանապարհ, բայց միայն
գաւազան. մի՛ պարկ, մի՛ հաց, մի՛
9 պղինձ ի գօտիս. Այլ ագանել հողա-
թափս, եւ, Մի՛ զգենուցուք, ասէ,
10 երկուս պարեգօտս։ Եւ ասէր ցնոսա,
Յոր տուն մտանիցէք, անդէն օթեւանս
11 կալջիք մինչեւ ելանիցէք անտի։ Եւ
որ ոչ ընկալցին զձեզ եւ ոչ լուիցեն
ձեզ, յորժամ ելանիցէք անտի, թօթա-
փեսջիք զփոշի ոտից ձերոց ի վկայու-
թիւն նոցա։
12 Եւ ելեալ քարոզէին զի ապաշխա-
13 րեսցեն։ Եւ դեւս բազումս հանէին,
եւ օծանէին իւղով զբազում հիւանդս
եւ բժշկէին զնոսա։
14 ԴԻ. Եւ լուաւ արքայ Հերովդէս,
քանզի յայտնի եղեւ անուն նորա, եւ
ասէր թէ Յովհաննէս մկրտիչ յարեաւ
ի մեռելոց, եւ վասն այնորիկ զօրու-
15 թիւնք լինին նովաւ։ Այլք ասէին թէ
Եղիա է, իսկ այլքն՝ թէ Մարգարէ է,
կամ թէ իբրեւ զմի ի մարգարէից։
16 Իբրեւ լուաւ Հերովդէս, ասէ, Զորոյ
ես զգլուխն հատի զՅովհաննու, սա է
նա, յարեաւ ի մեռելոց։
17 Զի ինքն Հերովդէս առաքեաց կա-
լաւ զՅովհաննէս, եւ կապեաց զնա եւ
եդ ի բանտի վասն Հերովդիայ կնոջ
Փիլիպպոսի եղբօր նորա, զի նա կին
18 արար զնա։ Քանզի ասէր Յովհաննէս
ցՀերովդէս թէ Ոչ է օրէն քեզ ունել
19 զկին եղբօր քո։ Եւ Հերովդիա ոխա-
ցեալ էր ընդ նմա, եւ կամէր սպանա-
20 նել զնա եւ ոչ կարէր։ Զի Հերովդէս
երկնչէր ի Յովհաննէ, քանզի գիտէր
զնա այր արդար եւ սուրբ, եւ սպա-
սէր նմա, եւ լուեալ ինմանէ՝ բազում
ինչ առնէր, եւ քաղցրութեամբ լսէր
21 նմա։ Իբրեւ օր մի լինէր պարապոյ,
յորժամ ընթրիս տայր Հերովդէս յա-
ւուր ծննդոց իւրոց նախարարաց իւրոց
եւ հազարապետաց եւ մեծամեծաց Գա-
22 լիլեացւոց. Եւ ի մտանել դստերն Հե-
րովդիայ եւ ի կաքաւել, հաճոյ եղեւ
Հերովդի եւ բազմականացն. ասէ թա-
գաւորն ցաղջիկն, Խնդրեա յինէն զոր
23 ինչ կամիս, եւ տաց քեզ։ Եւ երդ-
ուաւ նմա [1]բազում անգամ", թէ Զոր
ինչ եւ խնդրեսցես դու յինէն տաց
քեզ, մինչեւ ցկէս թագաւորութեան
24 իմոյ։ Նա ելեալ ասէ ցմայր իւր, Զի՞նչ
խնդրեցից. եւ նա ասէ, Զգլուխն Յով-
25 հաննու մկրտչի։ Եւ մտեալ անդրէն
փութանակի առ թագաւորն՝ ասէ, Կա-
միմ զի այժմ տացես ինձ վաղվաղակի
ի վերայ սկտեղ զգլուխն Յովհաննու
26 մկրտչի։ Եւ տրտմեցաւ յոյժ թագա-
ւորն, այլ վասն երդմանցն եւ կոչնա-
կանացն ոչ կամեցաւ անարգել զնա։
27 Եւ առաքեաց վաղվաղակի թագաւորն
դահիճ, եւ հրամայեաց բերել զգլուխն
նորա. եւ չոգաւ գլխատեաց զնա ի բան-
28 տին, Եւ եբեր զգլուխն նորա սկտեղբ
եւ ետ ցաղջիկն, եւ աղջիկն տարաւ
29 ետ մօր իւրում։ Իբրեւ լուան աշա-
կերտքն նորա, եկին, բարձին զմար-
մին նորա եւ եդին ի գերեզմանի։
30 ԵԿ. Ժողովեցան առաքեալքն առ Յի-
սուս, եւ պատմեցին նմա զամենայն
ինչ զոր արարին եւ զոր ուսուցին։
31 Եւ ասէ ցնոսա Յիսուս, Եկայք դուք
առանձինն յանապատ տեղի, եւ հան-
գիջիք սակաւ մի, զի էին բազումք
որ երթային եւ գային, եւ հաց ան-
32 գամ չժամանէին ուտել։ Եւ գնային
նաւու յանապատ տեղի առանձինն։
33 Եւ [2]տեսին զնոսա զի երթային, եւ
[3]զգացին բազումք. եւ հետի յամենայն
քաղաքաց խուռն ընթանային անդր,
34 եւ [4]մերձենային առ նոսա"։ Եւ ելեալ
ետես ամբոխ բազում եւ գթացաւ ի
նոսա, զի էին իբրեւ ոչխարք որոց
ոչ իցէ հովիւ. եւ սկսաւ ուսուցանել
զնոսա յոյժ։
35 Եւ իբրեւ բազում ժամ եղեւ, մա-

[1] Ի բազմաց պակասէ
[2] Ոմանք, ետես ամբոխն
[3] Բազումք, ծանեան
[4] Բազումք, յառաջեցին քան զնոսա

տուցեալ աշակերտքն ասէին, Տեղիս
անապատ է. մինչդեռ աւուր կայ,
36 Արձակեա զժողովուրդդ, զի երթեալ
շուրջ յագարակս եւ ի գեղս գնեսցեն
իւրեանց [1]զինչ ուտիցեն՝՝, զի աստ ու-
37 տել ինչ ոչ ունին։ Նա պատասխանի
ետ եւ ասէ ցնոսա, Դուք տուք դոցա
ուտել. ասեն ցնա, Երթիցուք գնես-
ցո՞ւք երկերիւր դահեկանի հաց, եւ
38 տացուք դոցա ուտել։ Ասէ ցնոսա,
Քանի՞ նկանակ ունիք, երթայք տե-
սէք. իբրեւ գիտացին, ասեն ցնա,
39 Հինգ՝ եւ երկու ձկունս։ Եւ հրա-
մայեաց նոցա բազմել երախանս երա-
40 խանս ի վերայ դալար խոտոյ։ Եւ բազ-
մեցան դասք դասք՝ ուր հարեւր եւ
41 ուր յիսուն։ Եւ առեալ զհինգ նկա-
նակն եւ զերկուս ձկունսն՝ հայեցաւ
յերկինս, օրհնեաց, մանրեաց զնկա-
նակսն եւ ետ ցաշակերտսն զի արկցեն
նոցա, եւ զերկուս ձկունսն բաշխեաց
42 ամենեցուն։ [2]Կերան եւ յագեցան.
43 Եւ բարձին զնշխարսն երկոտասան սա-
44 կառի լի, եւ ի ձկանց անտի։ Եւ էին
որք կերանն իբրեւ արք հինգ հազար։
45 ԵԲ. Եւ նոյնժամայն ճեպեաց զա-
շակերտսն մտանել ի նաւ, եւ յառա-
ջագոյն քան զնա երթալ յայնկոյս ի
Բեթսայիդա, մինչ ինքն զժողովուրդսն
46 արձակիցէ։ Եւ հրաժարեալ ի նոցանէ
47 եւ ի լեառն կալ յաղօթս։ Եւ իբրեւ ե-
րեկոյ եղեւ, էր նաւն ի մէջ ծովուն,
48 եւ ինքն ի ցամաքի։ Եւ ետես զնոսա
հողմակոծեալս ի վարելն, զի էր հողմն
ընդդէմ նոցա. եւ զչորրորդ պահու
գիշերոյն գայ առ նոսա գնալով ի վե-
րայ ծովուն, եւ կամէր զանց առնել
49 առ նոքօք։ Նոքա իբրեւ տեսին զի
գնայր ի վերայ ծովուն, համարեցան
թէ առաչօք ինչ լինիցի, եւ զաղաղակ
50 բարձին։ Քանզի ամենեքեան տեսին
զնա եւ խռովեցան. եւ նա անդէն
վաղվաղակի խօսեցաւ ընդ նոսա եւ ա-
սէ, Քաջալերեցարուք, ես եմ, մի՛ եր-
51 կնչիք։ Եւ ել ի նաւն առ նոսա, եւ դա-
դարեաց հողմն. եւ առաւել եւս յիմար-
եալ էին ի միտս իւրեանց եւ զարմա-
52 նային յոյժ։ Քանզի եւ ի վերայ հացին
ոչ իմացան, զի էր սիրտ նոցա թըմբ-
53 րեալ։ Եւ իբրեւ անցին յայնկոյս, ե-
54 կին յերկիրն [3]Գեննեսարէթ։ Եւ իբրեւ
ելին ի նաւէ անտի, իսկ եւ իսկ ծան-
55 եան զնա արք տեղւոյն այնորիկ։ Եւ
ընթացեալ այսր անդր ընդ ամենայն
գաւառն, սկսան մահճօք բերել զհի-
56 ւանդս, ուր լսէին թէ անդ իցէ։ Եւ
ուր եւ մտանէր ի գեղս կամ ի քաղաքս
կամ յագարակս, ի հրապարակս դնէին
զախտաժէտս, եւ աղաչէին զնա զի
գոնէ ի քղանցս հանդերձից նորա մեր-
ձենայցեն. եւ որ միանգամ մերձե-
ցանն՝ փրկեցան։

## ԳԼ. Է

1 ԵԳ. Եւ ժողովեցան առ նա փարի-
սեցիքն եւ ոմանք ի դպրացն որ եկեալ
2 էին յԵրուսաղեմէ։ Եւ տեսեալ զոմանս
յաշակերտաց անտի, զի խառնակ ձե-
ռօք, այսինքն է անլուայ, ուտէին հաց,
3 բամբասեցին. Զի փարիսեցիքն եւ ա-
մենայն Հրեայք եթէ ոչ բռնալիր լուա-
նան զձեռս, հաց ոչ ուտեն. քանզի
4 ունին զաւանդութիւն ծերոցն. Եւ
ի հրապարակէ մտեալ՝ եթէ ոչ նախ
մկրտիցին, ոչ ուտեն. եւ այլ ինչ բա-
զում է զոր ընկալան ունել, մկրտու-
թիւնս բաժակաց եւ ստոմանաց եւ
5 պղնձեաց եւ մահճաց։ Ապա հարցա-
նեն զնա փարիսեցիքն եւ դպիրք թէ
Ընդէ՞ր աշակերտքն քո ոչ գնան ըստ
աւանդութեան ծերոցն, այլ խառնակ
6 ձեռօք հաց ուտեն։ Նա պատասխանի
ետ եւ ասէ ցնոսա թէ Բարւոք մար-
գարէացաւ Եսայի վասն ձեր կեղծա-
ւորաց, որպէս ասաց, Ժողովուրդս
այս շրթամբք մեծարէ զիս, եւ սիրտք
նոցա հեռացեալ ի բացեայ են յինէն.
7 Զուր պաշտեն զիս, ուսուցանեն վար-
դապետութիւնս զմարդկան պատուիր-
8 եալս։ Թողեալ զպատուիրանն Աստու-
ծոյ, ունիք զմարդկան աւանդութիւն[4]։
9 Եւ ասէ ցնոսա, Բարւոք խոտէք զպատ-
ուիրանն Աստուծոյ, զի զձեր աւան-
10 դութիւնն հաստատիցէք։ Զի Մովսէս
ասէ, Պատուեա զհայր քո եւ զմայր.
եւ Որ չարախօսեսցէ զհօրէ կամ զմօրէ՝
11 մահու վախճանեսցի։ Եւ դուք ասէք,

[1]Ոմն., հաց [2]Յոյն, կերան ամենեքին

[3]Բ–ղ–մ., Գեննեսարէթ, եւ զետեղեցին զնաւն
[4]Ոմն. յաւելուն, մկրտութիւնս ստոմանաց եւ
բաժակաց եւ այլոց սոցին նմանեաց առնէք բա-
զումս

Եթէ ասիցէ ոք ցհայր կամ ցմայր,
կորբան, որ է պատարագ, զոր յինէն
12 օգտեսցիս · Եւ ոչ եւս տայք թոյլ նմա
13 առնել ինչ հօրն կամ մօր ։ Եւ անար-
գէք զբանն Աստուծոյ ձերով աւան-
դութեամբն, զոր աւանդեցէք, եւ բա-
զում ինչ այլ որ այսմ նման է՝ առնէք ։
14 Եւ կոչեալ առ ինքն զամենայն ժո-
ղովուրդն՝ ասէ ցնոսա, Լուարուք ինձ
15 ամենեքեան եւ ի միտ առէք ։ Ոչինչ
արտաքուստ ի մարդ մտեալ եթէ կա-
րիցէ պղծել զնա, այլ որ ելանէ ի նմա-
16 նէ՝ այն է որ պղծէ զմարդն ։ Որ ունի-
ցի ականջս լսելոյ՝ լուիցէ ։
17 ԵԴ· Եւ իբրեւ եմուտ ի տուն յամ-
բոխէ անտի, հարցանէին զնա աշա-
18 կերտքն վասն առակին ։ Եւ ասէ ցնո-
սա, Ա՞յդպէս եւ դուք անմիտ էք · ո՞չ
իմանայք եթէ ամենայն որ արտա-
քուստ ի ներքս մտանէ ի մարդ՝ ոչ
19 կարէ զնա պղծել · Զի ոչ եթէ ի սիրտ
նորա մտանէ, այլ՝ յորովայն, եւ ար-
տաքս ելանէ, եւ սրբէ զամենայն կե-
20 րակուրսն ։ Եւ ասէր թէ Որ ինչ ի
21 մարդոյն ելանէ՝ այն պղծէ զմարդ ։ Զի
ի ներքուստ ի սրտէ մարդկան խոր-
հուրդք չարութեան ելանեն, շնու-
22 թիւնք, պոռնկութիւնք, Գողութիւնք,
սպանութիւնք, ագահութիւնք, չա-
րութիւնք, նենգութիւնք, գիջու-
թիւնք, չարակնութիւն, հայհոյու-
թիւն, ամբարտաւանութիւն, անզգա-
23 մութիւն ։ Այս ամենայն չարիք ի ներ-
քուստ ելանեն եւ պղծեն զմարդ ։
24 Եւ անտի յարուցեալ եկն ի սահմանս
Տիւրոսի եւ Սիդոնի, եւ մտեալ ի
տուն ոչ ումեք կամէր յայտնել, եւ
25 ոչ կարաց ծածկել ։ Լուաւ կին մի
զնմանէ, որոյ դուստր իւր նեղեալ էր
յայսոյ պղծոյ, եկն անկաւ առաջի նո-
26 րա ։ Եւ կինն էր հեթանոս, Փիւնիկ
Ասորի յազգէ · եւ աղաչէր զնա զի
27 զդեւն հանցէ ի դստերէ նորա ։ Եւ
Յիսուս ասէ ցնա, Թոյլ տուր նախ
յագեսցին մանկունք, զի ոչ է բարւոք
առնուլ զհաց մանկանց եւ արկանել
28 շանց ։ Նա պատասխանի ետ եւ ասէ,
Տէր, եւ շունք ի փշրանաց սեղանոյ
29 մանկանցն կերակրին ։ Եւ ասէ ցնա,
Վասն այդր բանի երթ, ել դեւն ի
30 դստերէ քումմէ ։ Գնաց ի տուն իւր
եւ եգիտ ելեալ զդեւն, եւ զդուստրն
զի անկեալ դնէր ի մահիճս ։
31 ԵԵ· Եւ ելեալ միւսանգամ ի սահմա-
նացն Տիւրոսի եւ Սիդոնի, եւ եկն
ի ծովեզրն Գալիլեացւոց ի մէջ սահ-
32 մանացն ի Դեկապոլիս ։ Եւ բերին ա-
ռաջի նորա խուլ մի եւ համր, եւ ա-
ղաչէին զի ձեռն դիցէ ի վերայ նորա ։
33 Եւ առեալ զնա մեկուսի յամբոխէ ան-
տի, արկ զմատունս իւր ընդ ականջս
նորա եւ եթուք անդր · եւ կալաւ
34 զլեզուէ նորա, Հայեցաւ յերկինս ·
յոգւոց եհան եւ ասէ, Եփփաթա, որ է
35 բացիր ։ Եւ նոյնժամայն բացան լսե-
լիք նորա, եւ լուծան կապանք լեզուի
36 նորա եւ խօսէր ուղիղ ։ Եւ պատուիր-
եաց նոցա զի մի՛ ումեք ասիցեն · եւ
որչափ նա պատուիրէր նոցա, նոքա
37 եւս առաւել քարոզէին · Եւ եւս քան
զեւս զարմանային եւ ասէին, Զամե-
նայն ինչ բարւոք գործեաց սա, զի
խլից լսել տայ եւ համերց խօսել ։

## ԳԼ· Ը

1 ԵԶ· Յաւուրսն յայնոսիկ դարձեալ
ժողովուրդ բազում էր, եւ ինչ ոչ ու-
նէին ուտել · կոչեաց զաշակերտսն իւր
2 եւ ասէ ցնոսա, Գթամ ես ի վերայ
ժողովրդեանդ, զի արդ երեք աւուրք
են մինչ առ իս են, եւ ոչ ունին զինչ
3 ուտիցեն · Եւ եթէ արձակեմ զսոսա
նօթիս ի տունս իւրեանց, նքթիցեն
ի ճանապարհի · զի ոմանք ի դոցանէ
4 ի հեռաստանէ եկեալ են ։ Պատասխանի
ետուն նմա աշակերտքն նորա, Ուս-
տի՞ [1]կարեն յագեցուցանել զդոսա հա-
5 ցիւ յանապատի աստ ։ Եւ հարցանէր
զնոսա, Քանի՞ նկանակ հաց ունիք ·
6 եւ նոքա ասեն, Եւթն ։ Եւ հրամայ-
եաց ժողովրդեանն բազմել ի վերայ
երկրի · եւ առեալ զեւթն նկանակն՝
գոհացաւ, եբեկ եւ տայր ցաշակերտսն
զի արկցեն · եւ արկին առաջի ժողո-
7 վրդեանն ։ Եւ ձկունս սակաւ ունէին,
եւ զայն եւս օրհնեաց եւ հրամայեաց
8 արկանել ։ Կերան եւ յագեցան · եւ
բարձին զնշխարս կոտորոցն եւթն
9 զամբիղ ։ Եւ էին որ կերանն՝ իբրեւ
չորք հազարք, եւ արձակեաց զնոսա ։
10 ԵԷ· Եւ նոյն ժամայն մտեալ ի նաւ

[1] Յ-ձն, կարիցէ ոք

հանդերձ աշակերտօքն՝ եկն ի կողմանս
11 [1]Դաղմանունեայ ։ Եկին փարիսեցիքն
եւ սկսան վիճել ընդ նմա, եւ խնդրէ-
ին ի նմանէ նշան յերկնից փորձելով
12 զնա ։ Եւ զայրացաւ յոգի իւր եւ ասէ,
Զի՞ է զի ազգս այս նշան խնդրէ. ամէն
ասեմ ձեզ թէ տացի նշան ազգիս այս-
13 միկ ։ Եթող զնոսա, դարձեալ եմուտ
ի նաւ եւ գնաց յայնկոյս ։
14 Եւ մոռացան հաց բառնալ, բայց
միայն մի նկանակ ունէին ընդ իւր-
15 եանս ի նաւին ։ Եւ պատուիրէր նոցա
եւ ասէր, [2]Զգոյշ եղերուք՝՝ ի խմորոյ
անտի փարիսեցւոց եւ ի խմորոյ [3]Հե-
16 րովդիանոսաց ։ Եւ խորհէին ընդ մի-
մեանս եւ ասէին թէ Զի հացս ոչ ու-
17 նիմք ։ Գիտաց Յիսուս եւ ասէ ցնոսա,
Զի՞ խորհիք [4]ի սիրտս ձեր, թերահա-
ւատք՝՝, թէ հաց ոչ ունիք. տակաւին
ո՞չ իմանայք եւ ո՞չ յիշէք. ապշու-
18 թի՞ւն ունի զսիրտս ձեր. Աչք գոն
եւ ո՞չ տեսանէք, ականջք են եւ ո՞չ
լսէք, [5]եւ ո՞չ իմանայք տակաւին՝՝, եւ
19 ո՞չ յիշէք ։ Յորժամ զհինգ նկանակն
ի հինգ հազարսն, եւ քանի՞ սակառի
բարձէք զկոտորոցն լի. եւ ասեն ցնա,
20 Երկոտասան ։ Եւ յորժամ զեւթն նկա-
նակն ի չորս հազարսն, քանի՞ զամբիղ
լի բարձէք զկոտորացն. եւ նոքա ասեն,
21 Եւթն ։ Եւ ասէ ցնոսա, Իսկ զիա՞րդ
ոչ իմանայք ։
22 Գան ի Բեթսայիդա, եւ ածեն առաջի
նորա կոյր մի, եւ աղաչէին զնա զի
23 մերձեսցի ի նա ։ Եւ առեալ զձեռանէ
կուրին՝ եհան արտաքոյ շինին, եթուք
յաչս նորա եւ ձեռն եդ ի վերայ նորա.
եւ հարցանէր ցնա թէ տեսանիցէ՞ ինչ ։
24 [6]Բացաւ, եւ ասէր, Տեսանեմ զմար-
25 դիկս զի շրջին իբրեւ զծառս ։ Դար-
ձեալ եդ ձեռս ի վերայ աչաց նորա,
[7]երաց, եւ տեսանէր. ողջացաւ, եւ
26 տեսանէր համարձակ զամենայն ։ Ար-
ձակեաց զնա ի տուն իւր եւ ասէ,
Ի շէնդ մի՛ մտանիցես, [8]այլ երթ ի տուն
քո. եւ յորժամ ի շէնն մտանիցես, մի՛
ումեք ասիցես ի շինին ։՝՝
27 ԶԿ. Եւ ել Յիսուս աշակերտօքն
հանդերձ ի շէնս Կեսարեայ Փիլիպ-
պեայ, եւ ի ճանապարհին հարցանէր
ցաշակերտսն եւ ասէր, Զո՞ ասեն
28 ասեն զինէն մարդիկն թէ իցեմ ։ Նոքա
ետուն պատասխանի եւ ասեն, ԶՅով-
հաննէս մկրտիչ, եւ այլք՝ ԶԵղիա, եւ
այլք՝ Զմի ոք ի մարգարէից անտի ։
29 Ասէ ցնոսա, Իսկ դուք զո՞ ասեք
ասէք զինէն թէ իցեմ. պատասխանի
ետ Պետրոս եւ ասէ ցնա, Դու ես
30 Քրիստոսն ։ Եւ սաստեաց ի նոսա զի
մի՛ ումեք ասիցեն զնմանէ ։
31 Եւ սկսաւ ուսուցանել զնոսա թէ
պարտ է Որդւոյ մարդոյ բազում չար-
չարանս ընդունել, եւ անարգել յե-
րիցանց եւ ի քահանայապետից եւ
ի դպրաց, եւ մեռանել եւ յերիր աւուր
32 յառնել ։ Եւ համարձակ զբանն խօսե-
ցաւ. եւ առեալ զնա մեկուսի Պետ-
33 րոսի՝ սկսաւ սաստել նմա ։ Եւ նա
դարձաւ ետես զաշակերտսն, սաստեաց
Պետրոսի եւ ասէ, Երթ յետս իմ, Սա-
տանայ, զի ոչ խորհիս դու զԱստու-
ծոյսն, այլ զմարդկանս ։
34 Եւ կոչեցեալ առ ինքն զժողովուրդն
աշակերտօքն հանդերձ՝ ասէ ցնոսա,
Եթէ ոք կամի գալ զկնի իմ, ուրասցի
զանձն իւր եւ բարձցէ զխաչ իւր եւ
35 եկեսցէ զկնի իմ ։ Զի որ կամիցի ապ-
րեցուցանել զանձն իւր՝ կորուսցէ զնա.
եւ որ կորուսցէ զանձն իւր վասն ա-
36 ւետարանին՝ ապրեցուսցէ զնա ։ Զի՞նչ
օգուտ է մարդոյ եթէ զաշխարհ ամե-
նայն շահեսցի, եւ զանձն իւր տու-
37 ժեսցի. [9]Քանզի զի՞նչ տացէ մարդ
38 փոխանակ անձին իւրոյ ։ Զի որ ոք
ամօթ համարեսցի զիս եւ զբանս իմ
ի շնացող եւ ի մեղաւոր ազգիս յայս-
միկ, եւ Որդի մարդոյ յամօթ արասցէ
զնա, յորժամ եկեսցէ փառօք Հօր իւրոյ
39 [10]եւ հրեշտակաց սրբոց՝՝։ Եւ ասէ ցնո-
սա, Ամէն ասեմ ձեզ, զի են ոմանք
ի սոցանէ որ աստ կան, որք մի՛ ճա-
շակեսցեն զմահ, մինչեւ տեսցեն զար-
քայութիւն Աստուծոյ եկեալ զօրու-
թեամբ ։

[1] Յոյնն, Դաղմանութեայ
[2] Բոլորն, Տեսէք, զգոյշ եղերուք
[3] Բոլորն, Հերովդի
[4] ի Բոլորս պակասէ
[5] ի Յոյնս պակասէ
[6] Յոյնն, Հայեցաւ
[7] Բոլորն, եւ Հայել
[8] Բոլորն, և մի՛ ումեք ասիցես ի շինին
[9] Ոմանք, կամ
[10] Յոյնն, Հանդերձ Հրեշտակօք սրբովք

## Գլ. Թ

1 Եւ յետ վեց աւուր առնու ընդ իւր
Յիսուս զՊետրոս եւ զՅակովբոս եւ
զՅովհաննէս, եւ հանէ զնոսա ի լեառն
մի բարձր առանձինն, եւ յայլակերպս
2 եղեւ առաջի նոցա։ Եւ ձորձք նորա
եղեն փայլուն սպիտակ [1]յոյժ, որպէս
թափիչք երկրի ոչ կարեն այնպէս սպի-
3 տակացուցանել։ Եւ երեւեցաւ նոցա
Եղիա Մովսիսիւ հանդերձ, եւ խօսէին
4 ընդ Յիսուսի։ Պատասխանի ետ Պետ-
րոս եւ ասէ ցՅիսուս, Ռաբբի, բարւոք
է մեզ աստ լինել. եւ արասցուք երիս
տաղաւարս, մի՝ քեզ, եւ մի՝ Մովսիսի,
5 եւ մի՝ Եղիայի. Քանզի ոչ գիտէր զինչ
6 խօսէր, զի զարհուրեալ էին։ Եւ եղեւ
ամպ մի հովանի ի վերայ նոցա, ձայն
եղեւ յամպոյ անտի եւ ասէ, Դա է
7 որդի իմ սիրելի, դմա լուարուք։ Եւ
յանկարծակի հայեցեալ այսր անդր՝ ոչ
եւս զոք ուրեք տեսին, բայց միայն
8 զՅիսուս ընդ իւրեանս։ Եւ մինչդեռ
իջանէին ի լեռնէ անտի, պատուիրեաց
նոցա զի մի՛ ումեք պատմեսցեն զոր
տեսինն, բայց յորժամ Որդի մարդոյ
9 ի մեռելոց յարիցէ։ Եւ նոքա զբանն
ի մտի ունէին, եւ խնդրէին ընդ մի-
մեանս թէ զի՞նչ իցէ ի մեռելոցն յառ-
10 նել։ Հարցին զնա եւ ասեն, Զի՞նչ է
այն զոր դպիրքն ասեն եթէ Նախ Ե-
11 ղիայի պարտ է գալ։ Նա պատասխանի
ետ նոցա եւ ասէ, Եղիա նախ եկեալ
յարդարեսցէ զամենայն. իսկ զիա՞րդ
գրեալ է զՈրդւոյ մարդոյ, զի բազում
12 ինչ չարչարեսցի եւ անգոսնեսցի։ Այլ
ես ասեմ ձեզ եթէ Եղիա եկն, եւ ա-
րարին ընդ նա զինչ եւ կամեցան, որ-
պէս եւ գրեալ է վասն նորա։
13 ԶԲ. Եւ եկեալ առ աշակերտսն, տեսին
ամբոխ շուրջ զնոքօք, եւ զդպիրսն՝ զի
14 վիճէին ընդ նոսա։ Եւ վաղվաղակի
ամենայն ժողովուրդն իբրեւ տեսին
զնա, զարմացան, եւ ընդ առաջ ըն-
15 թացեալ ողջոյն տային նմա։ Եւ եհարց
ցնոսա թէ Զի՞նչ վիճէիք ընդ նոսա։
16 Պատասխանի ետ մի ոմն ի ժողովրդե-
նէն եւ ասէ, Վարդապետ, ածի զորդի
17 իմ առ քեզ, զոր ունի այս համր. Եւ
ուր հասանէ, զարկուցանէ զնա. եւ
փրփրէ եւ կրճտէ զատամունս իւր եւ
ցամաքի. եւ ասացի ցաշակերտսն քո
զի հանցեն, եւ ոչ կարացին հանել զնա։
18 Պատասխանի ետ նոցա եւ ասէ, Ո՛վ
ազգ անհաւատ, մինչեւ յե՞րբ իցեմ
ընդ ձեզ, մինչեւ ցե՞րբ անսայցեմ ձեզ.
19 ածէք զնա առ իս։ Եւ ածին զնա առ
նա. իբրեւ ետես զնա այսն, վաղվա-
ղակի չարժլեաց զնա, եւ անկեալ յեր-
20 կիր թաւալէր եւ փրփրեայր։ Եհարց
ցհայր նորա եւ ասէ, Քանի՞ ժամա-
նակք են յորմէ հետէ այդ եղեւ դմա.
21 եւ նա ասէ, Ի մանկութենէ։ Բազում
անգամ ի հուր արկանէ եւ ի ջուր զի
կորուսցէ զդա. արդ եթէ կարող ինչ
ես, օգնեա մեզ, Տէր, գթացեալ ի վե-
22 րայ մեր։ Եւ Յիսուս ասէ ցնա, [2]Ասա-
ցեր թէ կարող ես", ամենայն ինչ հնա-
23 րաւոր է այնմ, որ հաւատայն։ Եւ
վաղվաղակի աղաղակեաց հայր ման-
կանն եւ ասէ, [3]Հաւատամ, օգնեա
24 անհաւատութեանս իմում։ Իբրեւ ե-
տես Յիսուս եթէ կուտի ժողովուրդն
ի վերայ, սաստեաց այսոյն պղծոյ եւ
ասէ, Համրդ եւ խուլ այս, ես տամ
քեզ հրաման, ել ի դմանէ, եւ այլ եւս
25 մի՛ մտանիցես ի դա։ Եւ աղաղակեաց
եւ յոյժ լլկեաց զնա եւ ել. եւ եղեւ
[4]սպառնեալն իբրեւ զմեռեալ, մինչեւ
26 բազմաց իսկ ասել թէ Մեռաւ։ Եւ Յի-
սուս կալաւ զձեռանէ նորա, յարոյց
27 զնա, եւ կանգնեցաւ։ Եւ իբրեւ եմուտ
նա ի տուն, աշակերտքն առանձինն
հարցին ցնա, Մեք ընդէ՞ր ոչ կարա-
28 ցաք հանել զնա։ Եւ ասէ ցնոսա, Այդ
ազգ ոչ իւիք ելանէ, եթէ ոչ պահօք
եւ աղօթիւք։
29 ԶԳ. Եւ անտի ելեալ անցանէին առ
Գալիլեացւովք, եւ ոչ կամէր եթէ ոք
30 գիտասցէ։ Քանզի ուսուցանէր զաշա-
կերտսն իւր եւ ասէր ցնոսա թէ Որդի
մարդոյ մատնելոց է ի ձեռս մարդկան,
եւ սպանցեն զնա, եւ իբրեւ սպանցի,
31 յերիր աւուր յառնէ։ Եւ նոքա ոչ գի-
տէին զբանն, եւ երկնչէին հարցանել
ցնա։
32 Եկն ի Կափառնայում, եւ իբրեւ ե-
մուտ ի տուն, հարցանէր զնոսա, Զի՞նչ

[1]Ոմանք, յոյժ իբրեւ զձիւն

[2]Ի Յունն, ոմանք, Եթէ կարող ես հաւատալ. Այլք՝ Եթէ կարող ես
[3]Ոմանք, Հաւատամ, Տէր. [4]Ի Յունն դողալն

վիճէիք զճանապարհայն ընդ միմեանս։
33 Եւ նոքա լուռ լինէին, քանզի ընդ
միմեանս վիճէին ի ճանապարհին թէ
34 ո՛վ մեծ իցէ։ Եւ իբրեւ նստաւ, կո-
չեաց զերկոտասանսն եւ ասէ ցնոսա,
Եթէ ոք կամի առաջին լինել, եղիցի
ամենեցուն կրտսեր եւ ամենեցուն
35 պաշտօնեայ։ Եւ առեալ մանուկ մի
կացոյց ի մէջ նոցա. եւ ընկալեալ զնա
36 ի գիրկս իւր՝ ասէ ցնոսա, Որ միան-
գամ յայսպիսի մանկտւոյ ընկալցի յա-
նուն իմ, զիս ընդունի. եւ որ զիսն
ընդունիցի, ոչ զիս ընդունի, այլ՝ զայն
37 որ առաքեացն զիս։ Պատասխանի ետ
նմա Յովհաննէս եւ ասէ, Վարդապետ,
տեսաք զոմն զի յանուն քո դեւս հա-
նէր եւ զմեր կնի ոչ շրջէր, եւ ար-
38 գելաք զնա։ Եւ նա ասէ, Մի՛ արգե-
լուք զնա, զի ոչ ոք է որ առնէ զօ-
րութիւնս յանուն իմ, եւ կարիցէ հայ-
39 հոյել զիս*։ Զի որ ոչն է ընդ [1]մեզ հա-
40 կառակ՝ ի [2]մեր կոյս է։ Եւ որ ոք ար-
բուսցէ ձեզ ջուր բաժակաւ [3]յանունս
յայս՝՝ թէ դուք Քրիստոսի էք, ամէն
ասեմ ձեզ, մի՛ կորուսցէ զվարձս իւր։
41 Եւ որ ոք գայթակղեցուսցէ զմի ի փո-
քրկանցս որ հաւատան յիս, լաւ էր
նմա առաւել եթէ արկեալ էր ընդ պա-
րանոց նորա երկան իշոյ, եւ ընկեց-
42 եալ ի ծով։ Եւ եթէ գայթակղեցուսցէ
զքեզ ձեռն քո, հատ ընկեա ի քէն.
զի լաւ իցէ քեզ խեղ մտանել ի կեանսն
[4]յաւիտենից, քան երկուս ձեռս ունել
եւ երթալ ի դժոխս ի հուրն անշէջ։[5]
44 Եւ եթէ ոտն քո գայթակղեցուսցէ
զքեզ, հատ ընկեա զնա ի քէն. լաւ
իցէ քեզ կաղ մտանել ի կեանսն [4]յա-
ւիտենից, քան երկուս ոտս ունել եւ
46 անկանել ի [6]դժոխս։[7] Եւ եթէ ակն քո
գայթակղեցուսցէ զքեզ, հան զնա ի
բաց. լաւ իցէ քեզ միով ակամբ մտա-
նել յարքայութիւն Աստուծոյ, քան
երկուս աչս ունել եւ անկանել ի գե-
47 հենն. Ուր որդն նոցա ոչ մեռանի եւ

[1]Ոմանք+, ձեզ
[2]Ոմանք+, ձեր
[3]Ոմանք+, յանուն իմ
[4]ի Յունին պակաս
[5]Բազումք յաւելուած, 43 Ուր որդն նոցա ոչ մե-
ռանի, եւ հուրն ոչ շիջանի։
[6]Ոմանք+, գեհեն ի հուրն անշէջ
[7]Բազումք յաւելուած, 45 Ուր որդն նոցա ոչ մե-
ռանի, եւ հուրն ոչ շիջանի։
*Բազումք յաւելուած, վաղ-
վաղակի

48 հուրն ոչ շիջանի։ Զի ամենայն [8]ինչ
49 հրով յաղեսցի[9]։ Բարւոք է աղ. եւ
եթէ աղն անհամեսցի, ի՞ւ համեմեսցի.
արդ դուք կալարուք յանձինս ձեր
զաղն, եւ խաղաղութիւն արարէք ընդ
միմեանս։

## ԳԼ. Ժ

1 ՁԴ. Եւ անտի յարուցեալ գայ ի սահ-
մանս Հրէաստանի յայնկոյս Յորդա-
նանու. եւ երթայր դարձեալ խռնեալ
ժողովուրդն առ նա, եւ որպէս սովոր
էր, միւսանգամ ուսուցանէր զնոսա։
2 Իսկ փարիսեցիքն մատուցեալ փոր-
ձելով հարցանէին զնա եւ ասէին, եթէ
Արժա՞ն իցէ առն զկին իւր արձակել։
3 Նա պատասխանի ետ նոցա եւ ասէ,
4 Զի՞նչ պատուիրեաց ձեզ Մովսէս։ Եւ
նոքա ասեն, Մովսէս հրաման ետ զիր
5 մեկնելոյ գրել եւ արձակել։ Պատաս-
խանի ետ Յիսուս եւ ասէ ցնոսա,
Վասն խստասրտութեան ձերոյ գրեաց
6 ձեզ զպատուիրանն զայն. Այլ ի սկզբա-
նէ արարածոց արու եւ էգ արար
7 զնոսա Աստուած, եւ ասէ, Վասն այ-
սորիկ թողցէ այր զհայր իւր եւ զմայր,
8 եւ երթիցէ զհետ կնոջ իւրոյ, Եւ ե-
ղիցին երկուքն ի մարմին մի, եւ այ-
նուհետեւ ոչ են երկու, այլ՝ մարմին
9 մի։ Արդ զոր Աստուած զուգեաց,
10 մարդ մի՛ մեկնեսցէ։ Եւ ի տան դար-
ձեալ աշակերտքն զնոյն հարցին ցնա։
11 Եւ ասէ ցնոսա, Եթէ այր արձակեսցէ
12 զկին իւր եւ արասցէ այլ, շնայ։ Եւ
կին եթէ ելցէ յառնէ իւրմէ եւ եղիցի
առն այլում, շնայ։
13 ՁԵ. Եւ մատուցանէին առ նաման-
կտի, զի ձեռն դիցէ նոցա. իսկ աշա-
կերտքն սաստէին այնոցիկ որ մատու-
14 ցանէինն։ Իբրեւ ետես Յիսուս, բար-
կացեալ սաստեաց նոցա եւ ասէ, Թոյլ
տուք մանկտւոյդ գալ առ իս, եւ մի՛
արգելուք զդոսա. զի այդպիսեացդ է
15 արքայութիւն Աստուծոյ։ Ամէն ասեմ
ձեզ, Որ ոչ ընկալցի զարքայութիւն
Աստուծոյ իբրեւ զմանուկ՝ ոչ մտցէ
16 ի նա։ Եւ առեալ զնոսա ի գիրկս՝ ձեռն
եդ ի վերայ եւ օրհնեաց զնոսա։

[8]Յոյնն, ոք
[9]Ոմանք+ յաւելուած, եւ ամենայն զոհ աղիւ յա-
ղեսցի

17 Եւ ընդ ելանելն նորա անտի ի ճա-
նապարհ, ահաւասիկ ոմն մեծատուն
ընթացեալ ի ծունր իջանէր, հարցա-
նէր ցնա եւ ասէր, Վարդապետ բարի,
զի՞նչ արարից զի զկեանսն յաւիտե-
18 նականս ժառանգեցից։ Եւ Յիսուս
ասէ ցնա, Զի՞ ասես զիս բարի. չիք
19 ոք բարի բայց մի Աստուած։ Զպատ-
ուիրանս գիտես. Մի՛ շնար, Մի՛ սպա-
նաներ, Մի՛ գողանար, Մի՛ սուտ
վկայեր,[1] Պատուեա զհայր քո եւ զմայր։
20 Նա պատասխանի ետ եւ ասէ ցնա,
Վարդապետ, զայդ ամենայն արարի
ի մանկութենէ իմմէ, [2]արդ զի՞նչ եւս
21 պակաս իցեմ"։ Եւ Յիսուս հայեցեալ
ի նա՝ սիրեաց զնա, եւ ասէ ցնա, Մի
ինչ պակասէ ի քէն. եթէ կամիս կա-
տարեալ լինել, երթ, զոր ինչ ունիս
վաճառեա եւ տուր աղքատաց, եւ ու-
նիցիս գանձս յերկինս. եւ առ զխաչն
22 եւ եկ զկնի իմ։ Եւ նա խոժոռեալ
ընդ բանն՝ գնաց տրտում, զի ունէր
23 ինչս բազումս։ Եւ հայեցեալ յայսկոյս
յայնկոյս Յիսուս՝ ասէ ցաշակերտսն,
Զիա՛րդ դժուարին է որ զինչս ունին,
24 մտանել յարքայութիւն Աստուծոյ։ Եւ
աշակերտքն զարմացեալ էին ի վերայ
բանիցն նորա. իսկ Յիսուս դարձեալ
պատասխանի ետ նոցա եւ ասէ, Որ-
դեակք, ՛ո՛րչափ դժուարին է յուսա-
ցելոց yինչս մտանել յարքայութիւն
25 Աստուծոյ։ Դիւրին է մալխոյ ընդ ծակ
ասղան անցանել, քան մեծատան յար-
26 քայութիւն Աստուծոյ մտանել։ Եւ
նոքա առաւել եւս զարմանային եւ ա-
սէին ընդ միմեանս, Իսկ ո՞վ կարասս-
27 ցէ ապրել։ Հայեցեալ ընդ նոսա Յի-
սուս ասէ, Այդ ի մարդկանէ այդ ան-
հնարին է, այլ ոչ առ յԱստուծոյ[3]։
28 ՃԴ. Սկսաւ ասել ցնա Պետրոս, Ա-
հաւասիկ մեք թողաք զամենայն եւ
29 եկաք զկնի քո։ Պատասխանի ետ Յի-
սուս եւ ասէ, Ամէն ասեմ ձեզ, Ոչ
ոք է որ եթող զտուն կամ զեղբարս
կամ զքորս կամ զհայր կամ զմայր
կամ [4]զորդիս կամ զագարակս վասն
30 իմ [5]կամ վասն աւետարանին, Եթէ ոչ
առնուցու հարիւրապատիկ այժմ յայսմ
ժամանակի տունս եւ եղբարս եւ քորս
եւ մարս եւ որդիս եւ ագարակս հա-
լածանօք հանդերձ, եւ յաշխարհին որ
գալոց է՝ զկեանսն յաւիտենականս։
31 Զի բազումք եղիցին առաջինք՝ յե-
տինք, եւ յետինք՝ առաջինք։
32 Եւ էին ի ճանապարհի մինչդեռ ե-
լանէին յԵրուսաղէմ. եւ երթայր Յի-
սուս առաջի քան զնոսա, եւ զարմա-
ցեալ էին որ զհետն երթային եւ եր-
կնչէին։
ՃԵ. Եւ առեալ միւսանգամ զերկո-
տասանսն առանձինն, սկսաւ ասել
նոցա զինչ անցք անցանելոց իցեն ընդ
33 նա. Թէ Ահաւասիկ ելանեմք յԵրու-
սաղէմ, եւ Որդի մարդոյ մատնեսցի
քահանայապետից եւ դպրաց, եւ դա-
տեսցին զնա ի մահ, եւ մատնեսցեն
34 զնա հեթանոսաց. Եւ կատակեսցեն
զնովաւ, եւ հարկանիցեն զնա, եւ
թքանիցեն ի նա եւ սպանցեն, եւ յե-
րիր աւուր յարիցէ։
35 Եւ երթային առ նովաւ Յակովբոս
եւ Յովհաննէս որդիքն Զեբեդեայ, եւ
ասեն ցնա, Վարդապետ, կամիմք զի
զոր ինչ խնդրեսցուք ի քէն՝ արասցես
36 մեզ։ Եւ նա ասէ ցնոսա, Զի՞նչ կա-
37 միք յինէն զի արարից ձեզ։ Եւ նոքա
ասեն ցնա, Տուր մեզ զի նստցուք մի
յաջմէ քումմէ եւ մի յահեկէ ի փառսն
38 քում։ Պատասխանի ետ Յիսուս եւ
ասէ ցնոսա, Ոչ գիտէք զինչ խնդրէք.
կարէ՞ք ըմպել զբաժակն զոր ես ըմ-
պելոց եմ, կամ զմկրտութիւնն մկրտել
39 զոր ես մկրտելոցն եմ։ Եւ նոքա ա-
սեն ցնա, Կարեմք. եւ Յիսուս ասէ
ցնոսա, Զբաժակն զոր ես ըմպելոց
եմ՝ ըմպիցէք, եւ զմկրտութիւնն զոր
40 ես մկրտելոց եմ՝ մկրտիցիք. Այլ նըս-
տուցանել ընդ աջմէ իմմէ եւ ընդ ա-
հեկէ՝ ոչ է իմ տալ, այլ որոց պատ-
41 րաստեալ իցէ։ Եւ լուեալ զայն տա-
սանցն՝ սկսան բարկանալ Յակովբայ
42 եւ Յովհաննու։ Եւ Յիսուս կոչեաց
զնոսա առ ինքն, եւ ասէ ցնոսա, Գի-
տէք զի որ յանուան իշխանքն են հե-
թանոսաց՝ տիրեն նոցա. եւ մեծամեծք
43 նոցա իշխեն նոցա։ Ոչ նոյնպէս իցէ
եւ ի ձերում միջի. այլ որ կամիցի
ի ձէնջ մեծ լինել՝ եղիցի ձեր պաշտօ-
44 նեայ. Եւ որ կամիցի ի ձէնջ առաջին

[1] Բազումք յաւելուն, Մի՛ զրկեր,
[2] Ի բազումս պակասէ
[3] Բազումք յաւելուն, զի ամենայն ինչ հնարաւոր է առ ի յԱստուծոյ
[4] Ոմանք, զկին կամ զորդիս
[5] Բազումք, և

45 լինել՝ եղիցի ամենեցուն ծառայ։ Քանզի եւ Որդի մարդոյ ոչ եկն առնուլ
պաշտօն, այլ պաշտել եւ տալ զանձն
իւր փրկանս փոխանակ բազմաց։
46 ԷԿ. Եւ գան յԵրիքով. եւ ընդ ելանելն նորա յԵրիքովէ աշակերտօքն եւ
բազում ժողովրդովք, որդի Տիմէի
Բարտիմէոս կոյր նստէր մուրացիկ
47 յանցս ճանապարհի։ Իբրեւ լուաւ թէ
Յիսուս Նազովրեցի է, սկսաւ աղաղակել եւ ասել, Որդի Դաւթի, Յի-
48 սուս, ողորմեաց ինձ։ Եւ սաստէին
նմա բազումք զի լռեսցէ. եւ նա առաւել եւս աղաղակէր, Որդի Դաւթի,
49 ողորմեաց ինձ։ Զտեղի առ Յիսուս եւ
հրամայեաց կոչել զնա. կոչեն զկոյրն
եւ ասեն ցնա, Քաջալերեաց, արի,
50 կոչէ զքեզ։ Եւ նորա ընկեցեալ զձորձս
51 իւր՝ յարեաւ եկն առ Յիսուս։ Պատասխանի ետ նմա Յիսուս եւ ասէ, Զի՞նչ
կամիս թէ արարից քեզ. ասէ ցնա
52 կոյրն, Ռաբբունի, զի բացայց։ Եւ
Յիսուս ասէ ցնա, Երթ, հաւատք քո
կեցուցին զքեզ. եւ վաղվաղակի բացաւ, եւ երթայր զհետ նորա ի ճանապարհին։

## ԳԼ. ԺԱ

1 Եւ յորժամ մերձ եղեն յԵրուսաղէմ,
ի Բեթփագէ եւ ի Բեթանիա, մօտ ի
լեառն Ձիթենեաց, առաքէ երկուս յա-
2 շակերտաց անտի, Եւ ասէ ցնոսա,
Երթայք դուք ի գեղջ որ ընդդէմ ձեր
կայ. եւ նոյնժամայն իբրեւ մտանէք
ի նա, գտանիցէք յաւանակ մի կապեալ, յորոյ վերայ ոչ ոք ի մարդկանէ
3 նստաւ. լուծէք զնա եւ ածէք։ Եւ
եթէ ոք ասասցէ ձեզ եթէ Զի՞ լուծանէք
զյաւանակդ, ասասջիք եթէ Տեառն
իւրում պիտոյ է. եւ վաղվաղակի ա-
4 ռաքեսցէ զնա այսր։ Չոգան եւ գտին
զյաւանակն կապեալ առ դուրս արտաքոյ ի փողոցի անդ, եւ լուծին զնա։
5 Եւ ոմանք յորոց անդն կային՝ ասեն
ցնոսա, Զի՞ գործէք զի լուծանէք
6 զյաւանակդ։ Եւ նոքա ասեն ցնոսա
որպէս ասացն Յիսուս. եւ թոյլ ետուն
7 նոցա։ Ածեն զյաւանակն առ Յիսուս,
եւ արկանեն ի վերայ նորա հանդերձս,
8 եւ նստաւ ի վերայ նորա։ Եւ բազումք զհանդերձս իւրեանց տարածանէին ի վերայ ճանապարհին, եւ այլք
ոստս ի ծառոց հատանէին եւ արկա-
9 նէին զճանապարհաւն։ Եւ որ առաջին եւ զկնի երթային՝ աղաղակէին եւ
ասէին, Ովսաննա [1]Բարձրելոյն, օրհ-
10 նեալ որ գալոց յանուն Տեառն. Օրհնեալ թագաւորութիւնդ եկեալ հօր
մերոյ Դաւթի. [2]խաղաղութիւն յերկինս եւ փառք՝ ի բարձունս։
11 Եւ եմուտ Յիսուս յԵրուսաղէմ, ի
տաճարն, եւ հայեցաւ շուրջ զամենեքումբք. եւ զի էր երեկոյացեալ ժամն,
ել ի Բեթանիա երկոտասանիւքն հանդերձ։
12 ԷԲ. Եւ ի վաղիւ անդր մինչդեռ ե-
13 լանէին ի Բեթանիայ, քաղցեաւ։ Եւ
ետես թզենի մի ի բացուստ տերեւալից. եւ եկն թէ գտանիցէ ինչ ի նմա.
եւ իբրեւ եկն ի նա, ոչինչ եգիտ բայց
միայն տերեւ, զի ոչ իսկ էր ժամանակ
14 թզոյ։ Պատասխանի ետ եւ ասէ ցնա,
Մի՛ եւս ոք յաւիտեան ի քէն պտուղ
կերիցէ. եւ լսէին աշակերտքն նորա։
15 Գան յԵրուսաղէմ. եւ մտեալ ի տաճարն՝ սկսաւ հանել զվաճառականսն
եւ զգնողս որ էին ի տաճարին. եւ
զսեղանս հատավաճառացն ցրուեաց,
եւ զաթոռս աղաւնեվաճառացն կոր-
16 ծանեաց. Եւ ոչ թողոյր եթէ ոք անօթ ինչ անցուցանիցէ ընդ տաճարն։
17 Եւ ուսուցանէր եւ ասէր ցնոսա,
[3]Գրեալ է՝, թէ Տուն իմ տուն աղօթից կոչեսցի ամենայն հեթանոսաց,
եւ դուք արարէք զդա այրս աւազա-
18 կաց։ Լուան քահանայապետքն եւ
դպիրք, եւ խնդրէին թէ ո՛րպէս կորուսցեն զնա, բայց երկնչէին ի նմանէ.
զի ամենայն ժողովուրդն զարմացեալ
19 էր ընդ ուսումն նորա։ Եւ իբրեւ երեկոյ լինէր, արտաքոյ քան զքաղաքն
[4]ելանէին։
20 Եւ մինչդեռ այգուցն առ նովաւ անցանէին, տեսին զթզենին ցամաքեալ
21 յարմատոց։ Յիշեաց Պետրոս եւ ասէ
ցնա, Ռաբբի, ահաւասիկ թզենին զոր
22 անիծեր՝ ցամաքեցաւ։ Պատասխանի
ետ Յիսուս եւ ասէ ցնոսա, [5]Եթէ ու-

[1] Ի Բազումս պակասէ
[2] Բազումս, Ովսաննա
[3] Բազումս, Զիցէ՞ գրեալ
[4] Բազումս, ելանէր
[5] Բազումս, Եղիցին ձեր հաւատք յԱստուած։

23 նիցիք զհաւատոն Աստուծոյ,՟ Ամէն
ասեմ ձեզ, Որ ոք ասիցէ լերինս այ-
միկ, Բարձիր եւ անկիր ի ծով, եւ ոչ
երկմտիցէ ի սրտի իւրում, այլ հաւա-
տայցէ թէ զոր ասէն՝ լինի, եղիցի նմա
24 զոր ինչ եւ ասիցէ։ Վասն այսորիկ
ասեմ ձեզ, Ամենայն ինչ վասն որոյ
աղօթս արարեալ խնդրիցէք, եւ հա-
ւատայցէք թէ առնուցուք, եղիցի ձեզ։
25 Եւ յորժամ յաղօթս կայցէք, թողու-
ցուք եթէ ունիցիք ինչ զումեքէ. զի
եւ Հայրն ձեր որ յերկինս է՝ թողցէ
26 ձեզ զյանցանս ձեր։ Զի եթէ դուք ոչ
թողուցուք, եւ ոչ Հայրն ձեր որ յեր-
կինս է՝ թողցէ ձեզ զյանցանս ձեր։
27 ԽԳ. Գան միւսանգամ յԵրուսաղէմ,
եւ մինչդեռ ի տաճարի անդ զգնայր,
գան առ նա քահանայապետքն եւ
28 դպիրք եւ ծերք։ Եւ ասեն ցնա, Որո՞վ
իշխանութեամբ առնես զայդ, եւ ո՞վ
29 ետ քեզ զիշխանութիւնդ զայդ։ Պա-
տասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնոսա,
Հարցից եւ ես զձեզ բան մի, տուք
ինձ պատասխանի. եւ ես ասացից ձեզ
որով իշխանութեամբ առնեմ զայս։
30 Մկրտութիւնն Յովհաննու յերկնի՞ց էր
թէ ի մարդկանէ, տուք ինձ պատաս-
31 խանի։ Խորհէին ընդ միմեանս եւ ա-
սէին, Եթէ ասեմք եթէ Յերկնից, ասէ
ցմեզ, Իսկ ընդէ՞ր ոչ հաւատացէքնմա.
32 Այլ եթէ ասեմք, Ի մարդկանէ, ¹եր-
կընչիմք ի ժողովրդենէն, զի ամենե-
քին գիտէին զՅովհաննէս թէ մար-
33 գարէ էր։ Պատասխանի ետուն եւ ա-
սեն ցՅիսուս, Զգիտեմք. եւ Յիսուս
ետ նոցա պատասխանի եւ ասէ, Եւ
ոչ ես ասեմ ձեզ որով իշխանութեամբ
առնեմ զայս։

ԳԼ. ԺԲ

1 Եւ սկսաւ խօսել ընդ նոսա առակօք
²եւ ասել՟, Այր մի տնկեաց այգի եւ
ած շուրջ զնովաւ ցանգ, եւ գուր
հնձան փորեաց եւ շինեաց աշտարակ,
եւ ետ զնա ցմշակս եւ գնաց ի տար-
2 աշխարհ։ Եւ առաքեաց առ մշակսն ի
ժամանակի ծառայ մի, զի ի մշակաց
3 անտի առցէ ի պտղոյ այգւոյն։ Եւ նո-
ցա կալեալ՝ գան հարին զնա եւ ար-
4 ձակեցին ունայն։ Դարձեալ առաքեաց
առ նոսա այլ ծառայ, եւ զնա կա-
ռափնատեցին եւ արձակեցին անարգ-
5 եալ։ Եւ դարձեալ այլ առաքեաց, եւ
զնա սպանին. եւ զբազումս այլս՝ զո-
մանս հարկանէին եւ զոմանս սպանա-
6 նէին։ Ապա որդի մի էր իւր սիրելի,
զնա առաքեաց առ նոսա յետոյ, եւ
ասէ, Թերեւս ամաչեսցեն յորդւոյ սո-
7 ւի իմմէ։ Իսկ մշակքն իբրեւ տեսին
զնա թէ գայ, ասեն ցմիմեանս, Սա է
ժառանգն, եկայք սպանցուք զսա, եւ
8 մեր լիցի ժառանգութիւնն։ Եւ կալ-
եալ զնա սպանին եւ հանին արտա-
9 քոյ այգւոյն։ Արդ զի՞նչ արասցէ տէր
այգւոյն. եկեսցէ եւ կորուսցէ զմի-
շակսն, եւ տացէ զայգին ի ձեռս այ-
10 լոց։ Եւ ո՞չ զգիրն զայն իցէ ընթեր-
ցեալ ձեր, թէ Զվէմն զոր անարգեցին
շինողքն, նա եղեւ գլուխ անկեան.
11 ի Տեառնէ եղեւ այս, եւ է սքանչելի
յաչս մեր։
12 Եւ խնդրէին զնա ունել, եւ երկեան
ի ժողովրդենէ անտի, զի գիտացին թէ
առ նոսա ասաց զառակն. եւ թողին
զնա եւ գնացին։
13 Եւ առաքեն առ նա զոմանս ի փա-
րիսեցւոց անտի եւ ի Հերովդիանոսաց,
14 զի զնա որսասցեն բանիւ։ Եւ նոքա
եկեալ ³հարցանէին զնա նենգութեամբ
եւ՟ ասէին, Վարդապետ, գիտեմք զի
ճշմարիտ ես, եւ ոչ ինչ փոյթ է քեզ
զումեքէ. զի ոչ հայիս յերեսս մարդ-
կան, այլ ճշմարտութեամբ զճանա-
պարհն Աստուծոյ ուսուցանես. ³արդ
ասա մեզ,՟ արժա՞ն է հարկ տալ Կայ-
սեր եթէ ոչ. տացո՞ւք, թէ ոչ տա-
15 ցուք։ Եւ Յիսուս գիտաց զկեղծա-
ւորութիւն նոցա, ասէ ցնոսա, Զի՞
փորձէք զիս, ³կեղծաւորք. բերէք ինձ
16 դահեկան մի զի տեսից։ Եւ նոքա բե-
րին. եւ ասէ ցնոսա, Ո՞յր է պատկերս
այս կամ գիր. եւ նոքա ասեն ցնա,
17 Կայսեր։ Պատասխանի ետ Յիսուս եւ
ասէ ցնոսա, ⁴Երթայք, տուք զԿայսերն
Կայսեր, եւ զԱստուծոյն՝ Աստուծոյ.
եւ զարմացան ընդ նա։
18 ԽԴ. Գան առ նա սադուկեցիքն որ
ասեն թէ Զիք յարութիւն. հարցա-
19 նէին ցնա եւ ասէին, Վարդապետ,

¹Բնագրում, երկնչէին ²Ի Յունին պակաս

³Ի Բնագրում պակաս ⁴Ի Յունին պակաս

Մովսէս գրեաց մեզ եթէ ուրուք եղ-
բայր մեռանիցի եւ թողուցու կին եւ
որդի ոչ թողուցու, զի առցէ եղբայր
նորա զկին նորա, եւ յարուսցէ զա-
20 ւակ եղբօր իւրում։ Արդ եղբարք եւթն
էին [1]առ մեզ". առաջինն առ կին եւ
21 մեռաւ, եւ ոչ եթող զաւակ։ Եւ երկ-
րորդն առ զնոյն եւ մեռաւ, եւ ոչ նա
եթող զաւակ. նոյնպէս եւ երրորդն
22 առ զնոյն։ Եւ եւթնեքեան իսկ՝ եւ ոչ
թողին զաւակ. յետ ամենեցուն մե-
23 ռաւ եւ կինն։ Արդ ի յարութեանն
յորժամ յառնիցեն, ո՞յր ի նոցանէ լի-
նիցի կինն. զի եւթնեքեան կալան
24 զնա կին։ Պատասխանի ետ Յիսուս
եւ ասէ ցնոսա, Ո՞չ վասն այդորիկ իսկ
մոլորեալ էք, զի ոչ գիտէք զԳիրս եւ
25 ոչ զզօրութիւնն Աստուծոյ։ Զի յոր-
ժամ ի մեռելոց յարիցեն, ոչ արք կա-
նայս առնեն, եւ ոչ կանայք արանց
լինին, այլ իբրեւ զհրեշտակս իցեն որ
26 յերկինսն են։ Այլ վասն յարութեան
մեռելոց զի յառնեն, ո՞չ իցէ ընթեր-
ցեալ ձեր ի գիրսն Մովսիսի ի մորեն-
ւոջն, որպէս ասաց ցնա Աստուած,
Ես եմ, ասէ, Աստուած Աբրահամու,
Աստուած Իսահակայ եւ Աստուած Յա-
27 կովբայ։ Եւ ոչ է Աստուած մեռելոց,
այլ՝ կենդանեաց. եւ արդ դուք յոյժ
մոլորեալ էք։

28 Եւ մատուցեալ մի ոմն ի դպրացն՝
լսէր նոցա մինչ վիճէին. իբրեւ ետես
թէ բարւոք ետ նոցա զպատասխանին,
եհարց զնա [2]եւ ասէ", Ո՞ր պատուի-
29 րան է [3]առաջին։ Եւ Յիսուս ասէ ցնա,
Առաջին քան զամենայն՝ Լուր, Իսրա-
յէլ, Տէր Աստուած մեր Տէր մի է.
30 Եւ սիրեսցես զՏէր Աստուած քո յա-
մենայն սրտէ քումմէ, եւ յամենայն
անձնէ քումմէ, եւ յամենայն մտաց
քոց, եւ յամենայն զօրութենէ քումմէ.
31 այս է առաջին պատուիրան։ Եւ երկ-
րորդն նման սմին, Սիրեսցես զընկեր
քո իբրեւ զանձն քո. մեծ քան զսոսա
32 այլ պատուիրան ոչ գոյ։ Եւ ասէ ցնա
դպիրն, Բարւոք է, վարդապետ, ճշ-
մարտութեամբ ասացեր թէ մի է Աս-
տուած, եւ ոչ գոյ այլ բաց ի նմանէ.
33 Եւ սիրել զնա յամենայն սրտէ[4] եւ յա-
մենայն զօրութենէ եւ յամենայն մտաց,
եւ սիրել զընկերն իբրեւ զանձն, առա-
34 ւել է [5]քան զողջակէզս եւ զզոհս։ Եւ
տեսեալ Յիսուսի թէ իմաստութեամբ
ետ զպատասխանին՝ ասէ ցնա, Ոչ ես
հեռի յարքայութենէն Աստուծոյ. եւ
ոչ եւս ոք իշխէր ինչ հարցանել ցնա։
35 ԷԵ. Պատասխանի ետ Յիսուս եւ
ասէ, մինչ ուսուցանէր ի տաճարին,
Զիա՞րդ ասեն դպիրքն թէ Քրիստոսն
36 որդի Դաւթի է։ Եւ ինքն Դաւիթ
Հոգւովն Սրբով ասէ, Ասաց Տէր ցՏէր
իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ, մինչեւ
եդից զթշնամիս քո պատուանդան ո-
37 տից քոց։ Արդ եթէ ինքն իսկ Դաւիթ
զնա Տէր կոչէ, զիա՞րդ իցէ որդի նո-
րա. եւ բազում ժողովուրդ լսէր նմա
քաղցրութեամբ։

38 Եւ [6]ասէր ուսուցանելով" ի վար-
դապետութեան իւրում, Զգոյշ լերուք
ի դպրաց անտի, որ կամին ի հանդերձս
երեւելիս շրջել, [7]զնախողջոյնս խնդ-
39 րել ի հրապարակս, Եւ զնախաթոռս
ի ժողովուրդս, եւ զգահագլուխս յընթ-
40 րիս։ Որ ուտեն զտունս այրեաց, պատ-
ճառանօք յերկարեալ զաղօթս, զի ա-
ւելի եւս զպատապարտս ընկալցին։
41 Կայր Յիսուս ընդդէմ գանձանակին,
տեսանէր թէ զիա՛րդ ժողովուրդն ար-
կանէր պղինձ ի գանձանակն. եւ բա-
զում մեծատունք արկին բազում ինչ։
42 Եկն այրի մի եւ արկ երկուս լումայս,
43 որ է նաքարակիտ մի։ Եւ կոչեցեալ
առ ինքն զաշակերտսն իւր ասէ ցնոսա,
Ամէն ասեմ ձեզ, զի այրին այն տա-
նանկեալ չատ արկ քան զամենեսեան
44 որ արկին ի գանձանակն։ Քանզիա-
մենեքին յաւելորդաց իւրեանց արկին,
այլ նա ի չքաւորութենէ իւրմէ՝ զա-
մենայն ինչ զոր ունէր արկ զոյն չափ
զկեանս իւր։

## ԳԼ. ԺԳ

1 ԷԶ. Եւ յելանելն նորա ի տաճարէ
անտի, ասէ ցնա մի յաշակերտաց նո-
րա, Վարդապետ, տես որպիսի՛ են
2 քարինքս, եւ որպիսի՛ շինուածք։ Պա-

[1] ի բազումս պակասէ
[2] ի Ցանքն պակասէ
[3] Բազումք+, առաջին քան զամենայն

[4] Ոմանք+ յաւելուն, և յամենայն անձնէ
[5] Յոմն, քան զամենայն
[6] Բազումք+, ասէր ցնոսա
[7] Յոմն, զողջոյնս

տասխանի ետ նմա Յիսուս եւ ասէ,
Տեսանե՞ս զայդ [1]ամենայն շինուածս.
[2]ամէն ասեմ ձեզ եթէ" Ոչ թողցի այդր
քար ի քարի վերայ որ ոչ քակտեսցի։
3 Եւ մինչ նստէր նա ի լերինն Ձիթե-
նեաց յանդիման տաճարին, հարցանէին
ցնա առանձինն Պետրոս եւ Յակոբոս
4 եւ Յովհաննէս եւ Անդրէաս, Ասա մեզ
ե՞րբ լինիցի այդ, եւ զի՞նչ նշան է
յորժամ կատարելոց իցէ այդ ամենայն։
5 Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնո-
սա, Զգոյշ կացէք, մի՛ ոք զձեզ խա-
6 բեսցէ։ Զի բազումք եկեսցեն յանուն
իմ, եւ ասիցեն թէ Ես եմ [2]Քրիստոսն,
7 եւ զբազումս մոլորեցուսցեն։ Այլ յոր-
ժամ լսիցէք պատերազմունս եւ համ-
բաւս պատերազմաց, մի՛ խռովիցիք,
զի պարտ է լինել, բայց չեւ է կատա-
8 րածն։ Զի յարիցէ ազգ յազգի վերայ,
եւ թագաւորութիւն ի թագաւորու-
թեան վերայ, եւ եղիցին շարժմունք
ի տեղիս տեղիս, սովք [3]եւ սրածու-
թիւնք" [4]եւ խռովութիւնք". այլ այն
9 ամենայն սկիզբն է երկանց։ [5]Եւ զձեզ
իսկ մատնեսցեն յատեանս, եւ ի ժո-
ղովուրդս տանջիցիք, եւ առաջի դա-
տաւորաց եւ թագաւորաց կայցէք
վասն իմ ի վկայութիւն նոցա, [6]եւ ա-
10 մենայն հեթանոսաց. Բայց նախ պարտ
11 է աւետարանիս քարոզել"։ Այլ յորժամ
տանիցին զձեզ մատնել, մի՛ յառաջա-
գոյն հոգայցէք, եւ մի՛ զմտաւ ածի-
ցէք թէ զի՞նչ խօսիցիք. այլ որ ինչ
տացի ձեզ ի ժամուն յայնմիկ՝ զայն
խօսիցիք. զի ոչ դուք էք որ խօսի-
12 ցիքն, այլ՝ Հոգին Սուրբ։ Մատնեսցէ
եղբայր զեղբայր ի մահ, եւ հայր՝ զոր-
դի. եւ յարիցեն որդիք ի վերայ հարց
13 եւ սպանանիցեն զնոսա։ Եւ եղիջիք
ատեցեալք յամենեցունց վասն անուան
իմոյ, այլ որ համբերեսցէն ի սպառ՝
նա կեցցէ։
14 Եւ յորժամ տեսանիցէք զպղծութիւն
աւերածին[7], զի կայցէ ի տեղւոջ ուր
չիցէ արժան, (որ ընթեռնուն ի միտ
առցէ,) յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝
15 փախիցեն ի լերինս. Եւ որ ի վերայ
տանեացն իցէ՝ մի՛ իջցէ ի տուն, եւ
մի՛ մտցէ բառնալ ինչ ի տանէ իւրմէ.
16 Եւ որ յագարակին իցէ՝ մի՛ դարձցի
17 յետս առնուլ զձորձս իւր։ Բայց վա՜յ
իցէ յղեաց եւ ստնտուաց յաւուրսն
18 յայնոսիկ։ Յաղօթս կացէք զի մի՛ ձմե-
19 ռանի լինիցի այն։ Եղիցին աւուրքն
այնոքիկ նեղութեանց, որպիսի ոչ ե-
ղեն երբեք այնպիսիք ի սկզբանէ ա-
րարածոց մինչեւ ցայժմ, եւ մի՛ այլ
20 լիցի։ Եւ եթէ ոչ էր կարճեալ [8]Աստու-
ծոյ զաւուրսն զայնոսիկ [2]վասն ընտ-
րելոց իւրոց", ոչ ապրէր ամենայն մար-
մին. այլ վասն ընտրելոցն զորս ընտ-
րեաց՝ կարճեաց զաւուրսն զայնոսիկ։
21 Յայնժամ եթէ ոք ասիցէ ձեզ եթէ Ա-
հաւասիկ է Քրիստոսն կամ Ահանիկ,
22 մի՛ հաւատայցէք։ Զի յարիցեն սուտ
քրիստոսք եւ սուտ մարգարէք, եւ
տացեն նշանս եւ արուեստս առ ի մո-
լորեցուցանելոյ, եթէ հնար ինչ իցէ,
23 եւ զընտրեալսն։ Բայց դուք զգոյշ ե-
ղերուք, ահաւասիկ յառաջագոյն ա-
սացի ձեզ զամենայն։
24 Այլ յաւուրսն յայնոսիկ յետ նեղու-
թեանն այնորիկ արեգակն խաւարես-
25 ցի եւ լուսին ոչ տացէ զլոյս իւր։ Եւ
աստեղք յերկնից թօթափեսցին, եւ
26 զօրութիւնք յերկինս շարժեսցին։ Եւ
յայնժամ տեսցեն զՈրդի մարդոյ եկեալ
ամպովք եւ զօրութեամբ եւ փառօք
27 բազմօք։ Եւ յայնժամ առաքեսցէ զհրեշ-
տակս իւր, եւ ժողովեսցէ զընտրեալս
իւր ի չորից հողմոց, ի ծագաց երկրի
28 մինչեւ ի ծագս երկնից։ Բայց դուք
ի թզենւոյ անտի ուսջիք զառակն.
յորժամ ոստք նորա կակղա-
նայցեն եւ տերեւ արձակիցի ի նմա,
29 գիտէք թէ մերձ է ամառն. Նոյնպէս
եւ դուք յորժամ տեսանիցէք զայս
ամենայն եղեալ, գիտասջիք թէ մերձ
30 է առ դուրս։ Ամէն ասեմ ձեզ թէ Ոչ
անցցէ ազգս այս, մինչեւ այս ամե-
31 նայն եղիցի։ Երկինք եւ երկիր անց-
32 ցեն, եւ բանք իմ ոչ անցանիցեն։ Այլ
վասն աւուրն այնորիկ եւ ժամու ոչ
ոք գիտէ, ոչ հրեշտակք յերկինս եւ

[1] Յոյնն, մեծամեծ
[2] Ի Բազումս գրչէ
[3] Ի Յոմանս գրչէ
[4] Յոմանս գրչէ
[5] Բազումք, Զգոյշ լերուք անձանց, զի
[6] Յոյնն, Եւ նախ յամենայն հեթանոսս պարտ է աւետարանիս քարոզել
[7] Ոմանք յաւելուն, որ ասացեալն է ի ձեռն Դանիելի մարգարէի
[8] Բազումք, Տէրն

32 ոչ Որդի, բայց միայն Հայր։ Զգոյշ ե-
33 ղերուք, սկեցէք եւ կացէք յաղօթս, զի
34 ոչ գիտէք երբ ժամանակն իցէ։ Որպէս
այր մի գնացեալ ի տարաշխարհ՝ թո-
ղուցու զտուն իւր, եւ տայցէ ծառա-
յից իւրոց իշխանութիւն, եւ իւրա-
քանչիւր զգործ իւր, եւ դռնապանին
պատուէր տայցէ, զի արթուն լինիցի։
35 Արդ արթուն կացէք, զի ոչ գիտէք երբ
տէր տանն գայցէ, յերեկորեա՞յ, եթէ
ի մէջ գիշերի, եթէ ի հաւախօսի, եթէ
36 ընդ առաւօտս։ Գուցէ եկեալ յանկար-
37 ծակի՝ գտանիցէ զձեզ ի քուն։ Բայց
զոր ձեզդ ասեմ՝ ամենեցուն ասեմ,
Արթուն կացէք։

ԳԼ. ԺԴ

1 ՆԷ. Եւ էր զատիկն եւ բաղարջակերք
յետ երկուց աւուրց, խնդրէին քահա-
նայապետքն եւ դպիրք եթէ զիա՛րդ
զնա նենգաւ կալեալ սպանանիցեն։
2 Բայց ասէին թէ Մի՛ ի տօնի աստ, զի
մի՛ խռովութիւն լինիցի ի ժողովր-
դեանն։
3 Եւ մինչ էր ի Բեթանիա ի տան Սի-
մովնի բորոտի բազմեալ, եկն կին մի
որ ունէր շիշ իւղոյ նարդեան ազնուի
մեծագնոյ, եւ բեկեալ զշիշն՝ եհեղ ի
4 վերայ գլխոյ նորա։ [1]Եւ աշակերտքն՝
զչարէին եւ ասէին, Ընդէ՞ր եղեւ կո-
5 րուստ իւղոյդ այդորիկ. Մարթ էր
զայդ եւղ վաճառել աւելի քան երեք
հարեւր դահեկանի, եւ տալ աղքա-
6 տաց. եւ զայրանային նմա յոյժ։ Եւ
Յիսուս ասէ ցնոսա, Թոյլ տուք դմա,
զի՞ աշխատ առնէք, զի գործ մի բարի
7 գործեաց դա յիս։ Յամենայն ժամ զաղ-
քատս ընդ ձեզ ունիք, եւ յորժամ
կամիք, կարող էք առնել նոցա բարիս.
այլ զիս ոչ յամենայն ժամ ընդ ձեզ
8 ունիք։ Դա զոր ունէրդ՝ արար. յա-
ռաջագոյն խնկեաց զմարմին իմ ի նշան
9 պատանաց։ Ամէն ասեմ ձեզ, ուր եւ
քարոզեսցի աւետարանս այս ընդ ա-
մենայն աշխարհ, եւ զոր արար դա՝
խօսեսցի վասն յիշատակի դորին։
10 Եւ Յուդա Իսկարիովտացի, մի յեր-
կոտասանից անտի, գնաց առ քահա-
նայապետսն զի մատնեսցէ զնա նոցա։
11 Նոքա իբրեւ լուան, խնդացին, եւ խոս-
տացան տալ նմա արծաթ. եւ խնդրէր
թէ զիա՛րդ պարապով մատնեսցէ զնա։
12 Եւ յառաջնում աւուր բաղարջակե-
րացն յորժամ զզատիկն զենուին, ա-
սեն ցնա աշակերտքն, Ո՞ւր կամիս,
երթիցուք պատրաստեսցուք զի կերի-
13 ցես զզատիկն։ Եւ առաքէ երկուս յա-
շակերտաց անտի եւ ասէ ցնոսա, Եր-
թայք ի քաղաք, եւ իբրեւ մտանիցէք
ի քաղաքն, պատահեսցէ ձեզ այր մի
որ սափոր ջրոյ յուս ունիցի, երթայք
14 զհետ նորա։ Եւ յոր տուն մտանիցէ,
ասասջիք ցտանուտէրն, Վարդապետ
ասէ, Ո՞ւր են իջեւանքն ուր աշա-
15 կերտօքս ուտիցեմ զզատիկն։ Եւ նա
ցուցցէ ձեզ վերնատուն մի մեծ զար-
դարեալ, անդ պատրաստեսջիք մեզ։
16 Եւ գնացին պատրաստել աշակերտքն
նորա. եկին ի քաղաքն եւ գտին որ-
պէս ասացն նոցա, եւ պատրաստեցին
զզատիկն։
17 Եւ իբրեւ երեկոյ եղեւ, գայ երկո-
18 տասանիւքն հանդերձ։ Եւ իբրեւ բազ-
մեցան եւ ցեռ ուտէին, ասէ Յիսուս,
Ամէն ասեմ ձեզ զի մի ոմն ի ձէնջ
մատնելոց է զիս, որ ուտէ իսկ ընդ իս։
19 Եւ նոքա սկսան տրտմել եւ ասել մի
ըստ միոջէ, Միթէ ե՞ս իցեմ, եւ միւսն՝
20 Միթէ ե՞ս իցեմ։ Նա պատասխանի ետ
եւ ասէ ցնոսա, Մի յերկոտասանից
այտի որ մխեաց ընդ իս ի սկաւառակդ։
21 Այլ Որդի մարդոյ երթայ որպէս եւ
գրեալ է վասն նորա, բայց վա՜յ իցէ
մարդոյն այնմիկ՝ յոյր ձեռն Որդի մար-
դոյ մատնեսցի. լաւ էր նմա թէ չէր
իսկ ծնեալ մարդն այն։
22 Եւ մինչդեռ ուտէին, առեալ Յիսու-
սի հաց՝ օրհնեաց եւ եբեկ, ետ նոցա եւ
23 ասէ, [2]Առէք այդ է մարմին իմ։ Եւ
առեալ բաժակ՝ գոհացաւ եւ ետ նոցա,
24 եւ արբին ի նմանէ ամենեքեան։ Եւ
ասէ ցնոսա, Այս է արիւն իմ նորոյ
ուխտի, որ փոխանակ բազմաց հեղու։
25 Ամէն ասեմ ձեզ թէ ոչ եւս յաւելից
ըմպել ի բերոյ որթոյ մինչեւ ցօրն ցայն,
յորժամ արբից զնա նոր յարքայութեան
Աստուծոյ։
26 Եւ գոհացեալ ելին ի լեառն Ձիթե-
նեաց։
ՎԶ

[1]Բազումք, Եւ էին ոմանք որ

[2]Ոմանք, Առէք, կերէք

27 Եւ ասէ ցնոսա Յիսուս, Ամենեքին
գայթակղելոց էք յինէն յայսմ գիշերի.
զի գրեալ է թէ Հարից զհովիւն, եւ
28 ոչխարքն ցրուեսցին։ Այլ յետ յարու-
թեան իմոյ յառաջագոյն երթայց քան
29 զձեզ ի Գալիլեա։ Պատասխանի ետ
Պետրոս եւ ասէ ցնա, Թէպէտ եւ ա-
մենեքեան գայթակղեսցին, այլ ես ոչ։
30 Եւ ասէ ցնա Յիսուս, Ամէն ասեմ քեզ
թէ դու իսկ յայսմ գիշերի մինչեւ
[1]հաւու խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս
31 զիս։ Իսկ Պետրոս առաւել եւս պնդէր
եւ ասէր, Եթէ մեռանել եւս հասա-
նիցէ ընդ քեզ, զքեզ ոչ ուրացայց.
նոյնպէս եւ ամենեքեան ասէին։
32 Գան ի գեղն որում անուն էր Գեթ-
սեմանի, եւ ասէ ցաշակերտսն, Նստա-
րուք աստ, մինչեւ ես յաղօթս կայցից։
33 Եւ առնու ընդ իւր զՊետրոս եւ զՅա-
կովբոս եւ զՅովհաննէս, եւ սկսաւ
34 տխրել եւ հոգալ։ Յայնժամ ասէ ցնո-
սա, Տրտում է անձն իմ մինչեւ ի մահ,
35 մնացէք աստ եւ արթուն կացէք։ Եւ
մատուցեալ սակաւիկ մի յառաջ, ան-
կաւ ի վերայ երեսաց իւրոց յերկիր.
եւ կայր յաղօթս, զի եթէ հնար ինչ
36 է, անցցէ ի նմանէ ժամն։ Եւ ասէ,
Աբբա Հայր, ամենայն ինչ քեզ հնա-
րաւոր է, անցո զբաժակս զայս յինէն.
բայց ոչ որպէս ես կամիմ, այլ որպէս
37 դու կամիս։ Եւ գայ գտանէ զնոսա
զի ննջէին, եւ ասէ ցՊետրոս, Սիմովն,
ննջե՞ս. ո՞չ կարացեր ժամ մի արթուն
38 կալ։ Արթուն կացէք եւ յաղօթս կա-
ցէք, զի մի՛ մտջիք ի փորձութիւն.
ոգիս յօժար է, բայց մարմինս տկար։
39 Եւ դարձեալ չոգաւ եկաց յաղօթս, եւ
40 զնոյն բանս ասաց։ Դարձաւ միւսան-
գամ անդրէն եւ եգիտ զնոսա ի քուն.
քանզի էին աչք նոցա ծանրացեալ,
եւ ոչ գիտէին թէ զինչ պատասխանի
41 տայցեն նմա։ Գայ երրորդ անգամ եւ
ասէ ցնոսա, Ննջեցէք այսուհետեւ եւ
հանգերուք, [2]զի հասեալ է վախճան՝.
եկն ժամ եւ ահա մատնի Որդի մար-
42 դոյ ի ձեռս մեղաւորաց։ Ոն արիք,
գնասցուք, զի ահաւասիկ մերձեցաւ
որ մատնելոցն է զիս։
43 Եւ մինչդեռ նա զայն խօսէր, գայ
Յուդա [3]Իսկարիովտացի, մի յերկոտա-
սանից անտի, եւ ընդ նմա ամբոխ
սուսերօք եւ բրօք ի քահանայապետիցն
44 եւ ի դպրաց եւ ի ծերոց։ Տուեալ էր
նշան մատնչին եւ ասէր, Ընդ որում
ես համբուրեցից՝ նա է. կալջիք զնա
45 եւ տարջիք զգուշութեամբ։ Եւ մա-
տուցեալ վաղվաղակի ասէ ցնա, Ռաբ-
46 բի, Ռաբբի, եւ համբուրեաց զնա։ Եւ
նոքա արկին ի նա ձեռս եւ կալան զնա։
47 Եւ մի ոմն յայնցանէ որ զնովաւն կա-
յին՝ ձգեաց սուր, եւ եհար զծառայ
քահանայապետին, եւ ի բաց եհան
48 զունկն նորա։ Պատասխանի ետ Յի-
սուս եւ ասէ ցնոսա, Իբրեւ ի վերայ
աւազակի՞ ելէք սուսերօք եւ բրօք ու-
49 նել զիս։ Հանապազ առ ձեզ էի եւ
ուսուցանէի ի տաճարին, եւ ոչ կա-
լարուք զիս. այլ զի լցցին գիրք մար-
50 գարէիցն։ Յայնժամ թողին զնա աշա-
51 կերտքն ամենեքին եւ փախեան։ Եւ
ոմն երիտասարդ զհետ երթայր նորա՝
արկեալ զիւրեւ կտաւ մի ի մերկուց.
52 ունէին զնա երիտասարդքն. Եւ նորա
թողեալ զկտաւն՝ փախեաւ մերկ ի նո-
ցանէ։
53 Եւ տարան զՅիսուս առ քահանա-
յապետն [3]Կայիափա եւ գային ընդ նմա
ամենայն քահանայապետքն եւ դպիրք
54 եւ ծերք։ Եւ Պետրոս երթայր ի հե-
ռաստանէ զհետ նորա մինչեւ ի ներքս
իսկ ի գաւիթ քահանայապետին, եւ
նստէր ընդ սպասաւորսն եւ ջեռնոյր
55 առ լուսովն։ Իսկ քահանայապետքն
եւ ամենայն ատեանն խնդրէին հա-
կառակ Յիսուսի վկայութիւն ինչ,
զի սպանանիցեն զնա, եւ ոչ գտա-
56 նէին։ Զի բազումք սուտ վկայութիւն
վկայէին զնմանէ, եւ նման միմեանց ոչ
57 էին վկայութիւնքն։ Այլք յարուցեալ
վկայէին սուտ զնմանէ եւ ասէին, թէ
58 Մեք լուաք ի դմանէ զի ասէր, Ես քա-
կեցից զտաճարդ զայդ ձեռագործ, եւ
զերիս աւուրս շինեցից այլ, առանց
59 ձեռագործի։ Սակայն եւ այնպէս չէր
60 նման վկայութիւնն նոցա։ Ապա յա-
րուցեալ քահանայապետն ի մէջ՝ հար-
ցանէր զՅիսուս եւ ասէր, Ոչ ի՞նչ
տաս պատասխանի, զի՞նչ դոքա զքէն
61 վկայեն։ Եւ նա լուռ եւեթ կայր եւ
չտայր ինչ պատասխանի։ Դարձեալ

[1]Բազումս, հաւու երկիցս [2]Յոմն, բաւական է

[3]Ի բազումս պակասէ

քահանայապետն հարցանէր զնա կրկին
անգամ եւ ասէր, Դո՞ւ ես Քրիստոս
62 Որդի [1]Աստուծոյ օրհնելոյն ։ [2]Պատաս-
խանի ետ Յիսուս եւ ասէ ցնա, Դու
ասացեր թէ ես եմ". բայց տեսանիցէք
զՈրդի մարդոյ նստեալ ընդ աջմէ Զօ-
րութեան, եւ եկեալ ընդ ամպս երկ-
63 նից ։ Եւ քահանայապետն պատառեաց
[3]փաղփաղակի զպատմուճանս իւր եւ
ասէ, Զի՞նչ եւս պիտոյ են մեզ վկայք ։
64 Ահա [4]լուայք ամենեքին զհայհոյութիւն
ի բերանոյ դորա", զի՞րդ թուի ձեզ.
եւ ամենեքեան դատապարտեցին զնա
65 թէ մահապարտ է ։ Եւ ոմանք սկսան
թքանել ընդ երեսս նորա, ձորձ զգլխով
արկանել, կոփել եւ ասել, Մարգա-
րեաց [3]մեզ, Քրիստոսդ, ո՞վ է այն որ
եհարն զքեզ". եւ սպասաւորքն ապ-
տակս հանէին նմա ։
66 Եւ Պետրոս մինչդեռ էր ի խոնարհ
ի գաւթին, գայ աղախին մի քահանա-
յապետին, եւ տեսանէ զնա զի ջեռ-
67 նոյր. հայեցաւ ընդ նա եւ ասէ, Եւ
դու ընդ Յիսուսի Նազովրեցւոյ էիր ։
68 Նա ուրացաւ եւ ասէ, Ոչ ճանաչեմ
եւ ոչ գիտեմ զինչ դուդ ասես. եւ ել ար-
տաքս յառաջին գաւիթն, եւ հաւ
69 խօսեցաւ ։ Դարձեալ ետես զնա աղա-
խինն, եւ սկսաւ ասել ցայնոսիկ որ
շուրջն կային թէ Եւ սա ի նոցանէ է.
70 եւ նա դարձեալ ուրացաւ ։ Եւ յետ
սակաւ միոյ դարձեալ որ շուրջն կային՝
ասեն ցՊետրոս, Արդարեւ եւ դու ի
նոցանէ ես, քանզի Գալիլեացի ես, եւ
71 խօսքդ իսկ քո նման են ։ Եւ նա սկսաւ
նզովել եւ երդնուլ եւ ասել թէ Ոչ
72 գիտեմ զայրն զորմէ դուքդ ասէք ։ Եւ
նոյնժամայն կրկին հաւ խօսեցաւ. եւ
յիշեաց Պետրոս զբանն զոր ասաց ցնա
Յիսուս թէ Զեւ իցէ հաւու երկիցս
խօսեալ, զի դու երիցս ուրասցիս զիս,
եւ սկսաւ լալ ։

## ԳԼ. ԺԵ

1 Եւ վաղվաղակի ընդ առաւօտն խոր-
հուրդ արարեալ քահանայապետիցն
հանդերձ ծերովքն եւ դպրօք եւ ամե-
նայն ատեանն, կապեցին զՅիսուս եւ
2 տարան մատնեցին Պիղատոսի ։ Եւ
հարց զնա Պիղատոս եւ ասէ, Դո՞ւ ես
թագաւորն Հրէից. նա պատասխանի
3 ետ նմա եւ ասէ, Դու ասես ։ Եւ չա-
րախօսէին զնմանէ յոյժ քահանայա-
պետքն [3]եւ նա ոչինչ տայր պատաս-
4 խանի" ։ Իսկ Պիղատոս դարձեալ հար-
ցանէր զնա, Ոչի՞նչ տաս պատասխա-
նի, տես քանի՛ ամբաստանեն զքէն ։
5 Եւ Յիսուս այնուհետեւ ոչինչ ետ պա-
տասխանի, մինչեւ զարմանալ յոյժ
Պիղատոսի ։
6 Բայց ըստ տօնի արձակէր նոցա զմի
ոք զկապեալ, զոր ինքեանք խնդրէին ։
7 Եւ էր որում անուն էր Բարաբբա՝
կապեալ ընդ խռովիչսն, որոց ի խռո-
8 վելն՝ այր մի սպանեալ էր ։ Ի ձայն
բարձր սկսաւ աղաղակել ամբոխն եւ
խնդրել [5]որպէս սովոր էր, զի արձա-
9 կեսցէ նոցա զԲարաբբայն" ։ Պատաս-
խանի ետ Պիղատոս եւ ասէ ցնոսա,
Կամի՞ք զի արձակեցից ձեզ զարքայն
10 Հրէից ։ Քանզի գիտէր թէ առ նախան-
ձու մատնեցին զնա քահանայապետքն ։
11 Որք եւ զամբոխն հաւանեցուցին, զի
12 արձակեսցէ նոցա զԲարաբբայն ։ Դար-
ձեալ պատասխանի ետ Պիղատոս եւ ա-
սէ ցնոսա, Իսկ զի՞նչ կամիք թէ ա-
13 րարից զարքայն Հրէից ։ Եւ նոքա դար-
ձեալ աղաղակէին [3]յուզեալք ի քահա-
14 նայապետիցն", Ի խաչ հան զդա ։ Ասէ
ցնոսա Պիղատոս, Զի՞նչ ինչ չար ա-
րարեալ իցէ դորա. եւ նոքա առաւել
եւս աղաղակէին եւ ասէին, Ի խաչ հան
15 զդա ։ Իսկ Պիղատոս իբրեւ զմիտս կա-
մեցաւ հաճել զամբոխին, արձակեաց
նոցա զԲարաբբայն, եւ զՅիսուս գան
հարեալ ետ ի ձեռս զի ի խաչ եղանիցէ ։
16 Եւ զինուորքն տարան զնա ի ներքս
ի գաւիթն ուր [6]հրապարակն էր. եւ
կոչեն միանգամայն զամենայն զգունդն,
17 Եւ զգեցուցանեն նմա [3]քղամիդ կար-
միր եւ" ծիրանիս, եւ եդին ի գլուխ նո-
18 րա պսակ արարեալ ի փշոց ։ Եւ սկսան
ողջոյն տալ նմա եւ ասել, Ողջ եր,
19 արքայդ Հրէից ։ Եւ ծեծէին զգլուխն
եղեգամբ, եւ թքանէին ընդ երեսս,
եւ ի ծունր իջեալ երկիր պագանէին
20 նմա ։ Եւ իբրեւ կատակեցին զնա,

[1]Յոմանս պակասէ
[2]Բազումք, Եւ Յիսուս ասէ, Ես եմ
[3]Ի բազումս պակասէ
[4]Բազումք, լուայք զհայհոյութիւնն
[5]Յոյնն, որպէս միշտ առնէր նոցա
[6]Յոյնն, ապարանք, տես Մատթ. ԻԷ. 27.

մերկացուցին [1]զքղամիդն եւ՚՚ զծիրա-
նիս եւ զգեցուցին նմա զիւր հան-
դերձն, եւ ածին արտաքս զի ի խաչ
հանցեն զնա ։
21 Եւ ունէին պահակ զՍիմոն Կիւրե-
նացի, որ ընդ այն անցանէր՝ եկեալ
յագարակէ, զհայրն Աղեքսանդրի եւ
Ռուփայ, զի բարձցէ զխաչափայտն նո-
22 րա ։ Եւ ածեն զնա ի Գողգոթա, տեղի
մի որ թարգմանի Տեղի կառափելոյ ։
23 Եւ տային նմա գինի զմռսեալ, եւ նա
24 ոչ առ․ Եւ հանին զնա ի խաչ, եւ բա-
ժանեցին զհանդերձս նորա, արկեալ
վիճակս ի վերայ թէ ո զինչ առնուցու ։
25 Էր ժամ երրորդ եւ հանին զնա ի խաչ ։
26 Եւ էր գիր վնասու նորա գրեալ թէ
27 Թագաւոր է Հրէից ։ Եւ ընդ նմա հա-
նին ի խաչ երկուս աւազակս, մի ընդ
28 աջմէ եւ մի ընդ ահեկէ նորա ։ Եւ լցաւ
գիրն որ ասէ թէ Ընդ անօրէնս հա-
29 մարեցաւ ։ Եւ որք անցանէինն՝ հայհո-
յէին զնա շարժեալ զգլուխս իւրեանց
եւ ասէին, Վա՜հ, որ քակէիր զտա-
30 ճարն եւ զերիս աւուրս շինէիր․ Ապ-
31 րեցո զանձն քո եւ էջ ի խաչէդ ։ Նոյն-
պէս եւ քահանայապետքն այպն ա-
րարեալ ընդ միմեանս հանդերձ դպրօքն՝
ասէին, Զայլս ապրեցոյց, զանձն ոչ
32 կարէ ապրեցուցանել ։ Քրիստոսդ, ար-
քայդ Իսրայելի, իջցէ այժմ ի խաչէ
այտի, զի տեսցուք եւ հաւատասցուք
դմա․ եւ որ ընդ նմա ի խաչն ելեալ
էին՝ նախատէին զնա ։
33 Եւ իբրեւ վեց ժամ եղեւ, խաւար
կալաւ զամենայն երկիր մինչեւ ցինն
34 ժամ ։ Եւ յիններորդ ժամուն աղաղա-
կեաց Յիսուս ի ձայն մեծ եւ ասէ, [2]Էլի,
Էլի՚՚, լա՞մա սաբաքթանի․ որ թարգ-
մանի, Աստուած իմ, Աստուած իմ,
35 ընդէ՞ր թողեր զիս ։ Եւ ոմանք ի նո-
ցանէ որ շուրջն կային զնովաւ՝ իբրեւ
36 լուան, ասէին թէ զԵղիա կարդայ ։ Եւ
ընթացեալ մի ոմն՝ ելից սպունգ մի
քացախով, եւ հարեալ յեղեգան՝ տայր
ըմպել նմա, եւ ասէ, Թոյլ տուք տես-
ցուք, գա՞յ Եղիա իջուցանել զդա ։
37 Եւ Յիսուս արձակեաց ձայն մեծ եւ
38 եհան զոգի ։ Եւ վարագոյր տաճարին
պատառեցաւ յերկուս ի վերուստ մին-
39 չեւ ի խոնարհ ։ Եւ տեսեալ հարիւրա-
պետին որ կայր անդ թէ աղաղակեաց
եւ եհան զոգի, ասէ, Արդարեւ այրս
40 այս Որդի Աստուծոյ էր ։ Էին եւ կա-
նայք որ հայէին ի հեռաստանէ, յորս
էր Մարիամ Մագդաղենացի եւ Մա-
րիամ Յակոբայ փոքրկան եւ Յովսեայ
41 մայրն եւ Սողոմէ․ Որք յորժամ էրն
ի Գալիլեա, գնա՛ շրջէին նորա եւ պաշ-
տէին զնա․ եւ այլ բազում կանայք որ
ընդ նմա իսկ ելեալ էին յԵրուսաղէմ ։
42 Եւ իբրեւ երեկոյ եղեւ, քանզի ուր-
43 բաթ էր որ ի շաբաթն մտանէր, Եկեալ
Յովսէփ որ յԱրիմաթեայն էր, այր
պարկեշտ նախարար, որ եւ ինքն իսկ
ակն ունէր արքայութեանն Աստուծոյ,
համարձակեցաւ եմուտ առ Պիղատոս,
44 եւ խնդրեաց զմարմինն Յիսուսի ։ Եւ
Պիղատոս զարմացաւ թէ այնչափ վաղ
մեռաւ․ եւ կոչեցեալ առ ինքն զհարիւ-
րապետն՝ եհարց զնա եւ ասէ թէ Ար-
45 դարեւ այնչափ վա՞ղ մեռաւ ։ Եւ իբրեւ
ստուգեաց ի հարիւրապետէ անտի,
46 շնորհեաց զմարմինն Յովսեփայ ։ Եւ
Յովսէփ գնեաց կտաւ, եւ իջուցեալ
զնա՝ պատեաց կտաւովն եւ եդ ի գե-
րեզմանի զոր էր փորեալ ի վիմէ․ եւ
թաւալեցոյց վէմ մի ի դուռն գերեզ-
47 մանին ։ Իսկ Մարիամ Մագդաղենացի
եւ Մարիամ Յակոբայ եւ Յովսեայ
տեսին զտեղին ուր եդաւ ։

Գլ․ ԺԶ

1 Եւ իբրեւ անց շաբաթն, Մարիամ
Մագդաղենացի եւ Մարիամ Յակոբայ
եւ Սողոմէ գնեցան պատրաստեցին
2 խունկս, զի եկեսցեն օծցեն զնա ։ Եւ
ընդ առաւօտս միաշաբաթուն գան ի
3 գերեզմանն ընդ արեւագալն ։ Եւ ասէին
ընդ միմեանս, Ո՞վ թաւալեցուսցէ մեզ
4 զվէմն ի դրաց գերեզմանին․ (Եւ հայե-
ցեալ տեսին զի թաւալեցուցեալ էր
զվէմն ի գերեզմանէն․) քանզի էր մեծ
5 յոյժ ։ Եւ մտեալ ի ներքս ի գերեզմանն՝
տեսին երիտասարդ մի զի նստէր ընդ
աջմէ կողմանէ՝ զգեցեալ պատմուճան
6 սպիտակ, եւ զարհուրեցան ։ Եւ նա
ասէ ցնոսա, Մի՛ երկնչիք․ զՅիսուս
խնդրէք զՆազովրեցի զխաչելեալն,
յարեաւ, չէ աստ․ ահաւասիկ տեղին
7 ուր եդին զնա ։ Այլ երթայք, ասացէք
ցաշակերտս նորա եւ ցՊետրոս, եթէ

[1]Ի բաղդատմ. պակասէ [2]Բաղդատմ., Էլոի, Էլոի

*առնա յառաջագոյն երթայ քան զձեզ ի*
*Գալիլեա, անդ տեսանիցէք զնա, որ-*
8 *պէս ասացն ձեզ։ Եւ իբրեւ լուան, ե-*
*լին եւ փախեան ի գերեզմանէն, քանզի*
*զահի հարեալ էին. եւ ոչ ումեք ինչ*
*ասացին, զի երկնչէին։*
9 [1]*Յարուցեալ Յիսուս առաւօտուն* [2]*ա-*
*ռաջին միաշաբաթուն՝ երեւեցաւ Մա-*
*րիամու Մագդաղենացւոյ, յորմէ հան-*
10 *եալ էր զեւթն դեւն։ Եւ նա երթեալ*
*պատմեաց այնոցիկ որ ընդ նմայն էին,*
11 *մինչդեռ սգային եւ լային։ Նոքա իբ-*
*րեւ լուան թէ կենդանի է եւ երեւե-*
*ցաւ նմա, ոչ հաւատացին։*
12 *Յետոյ երեւեցաւ այլով* [3]*կերպարա-*
13 *նաւ որք երթային յանդաստան։ Նոքա*
*չոգան պատմեցին այլոց, եւ ոչ նոցա*
*հաւատացին։*
14 *Յետոյ մինչդեռ բազմեալ էին մետա-*
*սանքն, երեւեցաւ նոցա եւ թշնաման-*
*եաց զանհաւատութիւն նոցա եւ զխստա-*
*սրտութիւն.* [4]*զի որ երեւեցաւ նո-*
*ցա յարուցեալ ի մեռելոյ, եւ նոքա ոչ*
*հաւատացին՝։*
15 *Եւ ասէ ցնոսա, Երթայք յաշխարհ ա-*
*մենայն, եւ քարոզեցէք զաւետարանն*
16 *ամենայն արարածոց։ Որ հաւատայ եւ*
*մկրտիցի՝ կեցցէ, եւ որ ոչն հաւատայ՝*
17 *դատապարտեսցի։ Նշանք այնոցիկ որ*
*հաւատանն՝ երթիցեն զհետ, այսոքիկ.*
*յանուն իմ դեւս հանիցեն, լեզուս խօ-*
18 *սեսցին, Ի ձեռս իւրեանց օձս բարձ-*
*ցեն, եւ եթէ մահացու ինչ դեղ արբ-*
*ցեն, նոցա ինչ ոչ վնասեսցէ. ի վերայ*
*հիւանդաց ձեռս դիցեն, եւ* [5]*բժշկեսցեն։*
19 *Եւ ինքն Տէր Յիսուս յետ խօսելոյն*
*ընդ նոսա համբարձաւ յերկինս, եւ*
20 *նստաւ ընդ աջմէ Հօր։ Եւ նոքա ել-*
*եալ քարոզէին ընդ ամենայն երկիր*
*Տեառն գործակցութեամբ, եւ զբանն*
*հաստատէին ամենայն նշանօք որ եր-*
*թային զհետ նոցա։*

---

[1] Աստի մինչեւ ի կատարած գլխոյն պակասէ յօրինակ ի Յոյն յեւսեբիոյ
[2] Յոյնն, յառաջնումն շաբաթուն
[3] Յոյնն, կերպարանաւ երկուց ի նոցանէ
[4] Յոյնն, զի որոց տեսինն զնա յարուցեալ՝ ոչ հաւատացին
[5] Յոյնն, բժշկեսցին

# ԳԼՈՒԽՔ ՂՈՒԿԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՂՈՒԿԱՍՈՒ

## ԳԼՈՒԽ Ա

1 ՔԱՆԶԻ բազումք յօժարեցին վերստին
կարգել զպատմութիւն վասն իրացն
2 հաստատելոց ի մեզ, Որպէս աւանդե-
ցին մեզ որ ի սկզբանէ ականատեսք
3 եւ սպասաւորք եղեն բանին, Կամ ե-
ղեւ եւ ինձ, որ ի սկզբանէ զհետ եր-
թեալ էի ամենայնի ճշմարտութեամբ,
կարգաւ գրել քեզ, քաջդ Թէոփիլէ,
4 Զի ծանիցես զբանիցն որոց աշակեր-
տեցար՝ զճշմարտութիւն։
5 Եւ եղեւ յաւուրս Հերովդի արքայի
Հրէաստանի, քահանայ ոմն անուն
Զաքարիա ի դասակարգէ Աբիայ, եւ
կին նորա ի դստերաց Ահարոնի, եւ
6 անուն նորա Եղիսաբեթ։ Եւ էին ար-
դարք երկոքին առաջի Աստուծոյ, գնա-
յին յամենայն պատուիրանս եւ յիրա-
7 ւունս Տեառն անարատք։ Եւ ոչ գոյր
նոցա որդեակ, քանզի Եղիսաբեթ ա-
մուլ էր, եւ երկոքեան անցեալ էին
զաւուրբք իւրեանց։
8 Եւ եղեւ ի քահանայանալն նորա
ըստ կարգի աւուրցն հասանելոյ առաջի
9 Աստուծոյ, Ըստ օրինի քահանայու-
թեանն եհաս նմա խունկ արկանել՝
10 մտեալ ի տաճարն Տեառն։ Եւ ամե-
նայն բազմութիւն ժողովրդեանն կա-
յին յաղօթս արտաքոյ ի ժամու խնկոցն։
11 Եւ երեւեցաւ նմա հրեշտակ Տեառն,
զի կայր ընդ աջմէ սեղանոյ խնկոցն։
12 Եւ խռովեցաւ Զաքարիա, իբրեւ ե-
տես, եւ անկաւ ահ ի վերայ նորա։
13 Ասէ ցնա հրեշտակն [1]Տեառն, Մի՛ եր-
կնչիր, Զաքարիա, զի լսելի եղեն ա-
ղօթք քո, եւ կին քո Եղիսաբեթ ծնցի
քեզ որդի, եւ կոչեսցես զանուն նորա
14 Յովհաննէս։ Եւ եղիցի քեզ ուրախու-
թիւն եւ ցնծութիւն, եւ բազումք ի
15 ծննդեան նորա խնդասցեն. Զի եղիցի
մեծ առաջի Տեառն, եւ գինի եւ օղի
մի՛ արբցէ, եւ Հոգւով Սրբով լցցի
16 անդստին յորովայնէ մօր իւրոյ. Եւ
զբազումս յորդւոցն Իսրայելի դար-
17 ձուսցէ ի Տէր Աստուած իւրեանց։ Եւ
ինքն եկեսցէ առաջի նորա [2]հոգւով
զօրութեամբ Եղիայի, դարձուցանել
զսիրտս հարց յորդիս, եւ զանհաւանս
յիմաստութիւն արդարոց, պատրաս-
18 տել Տեառն ժողովուրդ կազմեալ։ Եւ
ասէ Զաքարիա ցհրեշտակն, Եւ ի՞ւ
գիտացից զայդ. զի ես ծեր եմ, եւ կին
19 իմ անցեալ զաւուրբք իւրովք։ Պատաս-
խանի ետ հրեշտակն եւ ասէ ցնա, Ես
եմ Գաբրիէլ որ կամ առաջի Աստու-
ծոյ, եւ առաքեցայ խօսել ընդ քեզ եւ
20 աւետարանել քեզ զայդ։ Եւ ահա ե-
ղիցես համր, եւ մի՛ կարասցես խօսել
մինչեւ ցօրն յորում այդ լինիցի. փո-
խանակ զի ոչ հաւատացեր բանից ի-
մոց, որք լցցին ի ժամանակի իւրեանց։
21 Եւ ժողովուրդն ակն ունէր Զաքա-
րիայ, եւ զարմանային ընդ յամելն նո-
22 րա ի տաճարին։ Եւ իբրեւ ել, ոչ կա-
րէր խօսել ընդ նոսա. եւ իմացան եթէ
տեսիլ ետես ի տաճարին. եւ նա նշա-
նացի խօսէր ընդ նոսա եւ կայր պա-
23 պանձեալ։ Եւ եղեւ իբրեւ լցան ա-
ւուրք պաշտաման նորա, գնաց ի տուն
24 իւր։ Եւ յետ աւուրցն այնոցիկ յղա-
ցաւ Եղիսաբեթ, կին նորա, եւ թա-
քուցանէր զանձն ամիսս հինգ, եւ ա-
25 սէր, Զի՞նչ գործ գործեաց ընդ իս Տէր
յաւուրս յորս հայեցաւ յիս բառնալ
զնախատինս իմ ի մարդկանէ։
26 Եւ յամսեանն վեցերորդի առաքեցաւ
Գաբրիէլ հրեշտակ յԱստուծոյ ի քա-
ղաք մի Գալիլեացւոց, որում անուն
27 էր Նազարեթ, Առ կոյս խօսեցեալ առն,
որում անուն էր Յովսէփ, ի տանէ
Դաւթի. եւ անուն կուսին Մարիամ։
28 Եւ եկեալ առ նա ասէ, Ուրախ լեր,
29 բերկրեալդ, Տէր ընդ քեզ։ Եւ նա

---

[1] ի Յոյնն պակասէ

[2] Յոյնն, հոգւով և

ընդ բանսն խռովեցաւ, եւ խորհէր ընդ
միտս թէ որպիսի՛ ինչ իցէ ողջոյնս
30 այս։ Եւ ասէ ցնա հրեշտակն, Մի՛ եր-
կնչիր, Մարիամ, զի գտեր շնորհս
31 յԱստուծոյ։ Եւ ահա յղասջիր եւ ծնցես
որդի, եւ կոչեսցես զանուն նորա Յի-
32 սուս։ Նա եղիցի մեծ, եւ Որդի Բար-
ձրելոյ կոչեսցի, եւ տացէ նմա Տէր
Աստուած զաթոռն Դաւթի հօր նորա.
եւ թագաւորեսցէ ի վերայ տանն Յա-
33 կոբայ յաւիտեանս, Եւ թագաւո-
34 րութեան նորա վախճան մի՛ լիցի։ Եւ
ասէ Մարիամ ցհրեշտակն, Զիա՞րդ լի-
նիցի ինձ այդ, քանզի զայր ոչ գիտեմ։
35 Պատասխանի ետ հրեշտակն եւ ասէ
ցնա, Հոգի Սուրբ եկեսցէ ի քեզ, եւ
զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի
ի վերայ քո. քանզի եւ որ ծնանելոցն
է ի քէն՝ սուրբ է, եւ Որդի Աստուծոյ
36 կոչեսցի։ Եւ ահա Եղիսաբեթ ազգա-
կան քո, եւ նա յղի է ի ծերութեան
իւրում. եւ այս վեցերորդ ամիս է նո-
37 րա որ ամուլն կոչեցեալ էր. Զի ոչ
տկարասցի առ յԱստուծոյ ամենայն
38 բան։ Եւ ասէ Մարիամ, Ահաւասիկ
կամ աղախին Տեառն, եղիցի ինձ բատ
բանի քում. եւ գնաց ի նմանէ հրեշ-
տակն։

39 Յարուցեալ Մարիամ յաւուրսն յայ-
նոսիկ՝ գնաց ի լեռնակողմն փութապէս
40 ի քաղաքն Յուդայ. Եւ եմուտ ի տուն
Զաքարիայ եւ ետ ողջոյն Եղիսաբեթի։
41 Եւ եղեւ իբրեւ լուաւ զողջոյնն Մա-
րիամու Եղիսաբեթ, խաղաց մանուկն
յորովայնի նորա. եւ լցաւ Եղիսաբեթ
42 Հոգւով Սրբով. Եւ ի ձայն բարձր ա-
ղաղակեաց եւ ասէ, Օրհնեալ ես դու
ի կանայս, եւ օրհնեալ է պտուղ որո-
43 վայնի քո։ Եւ ուստի՞ է ինձ այս, զի
44 եկեսցէ մայր Տեառն իմոյ առ իս։ Զի
ահաւասիկ իբրեւ եղեւ ձայն ողջունի
քո յականջս իմ, խաղաց ցնծալով մա-
45 նուկս յորովայնի իմում։ Եւ երանի
որ հաւատայցէ եթէ եղիցի կատարումն
46 ասացելոցս նմա ի Տեառնէ։ Եւ ասէ
Մարիամ, Մեծացուսցէ անձն իմ զՏէր.
47 Եւ ցնծացաւ հոգի իմ յԱստուած Փրկիչ
48 իմ։ Զի հայեցաւ ի խոնարհութիւն ա-
ղախնոյ իւրոյ. զի ահա յայսմ հետէ
49 երանեսցեն ինձ ամենայն ազգք։ Զի
արար ինձ մեծամեծս Հզօրն, եւ սուրբ
50 է անուն նորա։ Եւ ողորմութիւն նո-
րա ազգաց յազգս երկիւղածաց իւրոց։
51 Արար զօրութիւն բազկաւ իւրով,
ցրուեաց զամբարտաւանս մտօք սրտից
52 իւրեանց։ Քակեաց զհզօրս յաթոռոց,
53 եւ բարձրացոյց զխոնարհս։ Զքաղցեալս
լցոյց բարութեամբ, եւ զմեծատունս
54 արձակեաց ունայնս։ Պաշտպանեաց
Իսրայելի ծառայի իւրում՝ յիշել զո-
55 ղորմութիւնս։ Որպէս խօսեցաւ առ
հարս մեր՝ Աբրահամու եւ զաւակի
56 նորա յաւիտեան։ Եկաց Մարիամ առ
նմա իբրեւ ամիսս երիս, եւ դարձաւ
ի տուն իւր։

57 Եւ Եղիսաբեթի լցան ժամանակք
58 ծնանելոյ, եւ ծնաւ որդի։ Եւ լուան
որ շուրջ զնովաւ էին եւ ազգատոհմ
նորա, զի մեծ արար Տէր զողորմու-
թիւն իւր ընդ նմա. եւ խնդային ընդ
նմա։

59 Եւ եղեւ յաւուրն ութերորդի եկին
թլփատել զմանուկն, եւ կոչէին զնա
60 յանուն հօր իւրոյ Զաքարիա։ Պատաս-
խանի ետ մայր նորա եւ ասէ, Ոչ,
61 այլ կոչեսցի Յովհաննէս։ Եւ ասեն ցնա,
Քանզի ոչ ոք է յազգի քում, որոյ կոչի
62 անուն Յովհաննէս։ Ակնարկէին հօրն
նորա թէ զի՛նչ կամիցի կոչել զնա.
63 Եւ խնդրեաց տախտակ, գրեաց եւ ասէ,
Յովհաննէս է անուն դորա. եւ զար-
64 մացան ամենեքին։ Եւ բացաւ բերան
նորա վաղվաղակի եւ լեզու նորա, եւ
65 խօսէր եւ օրհնէր զԱստուած։ Եւ ե-
ղեւ ահ ի վերայ ամենեցուն որ լսէին
զայս եւ որ շուրջ բնակեալն էին զնո-
վօք. եւ ընդ ամենայն լեռնակողմն
Հրէաստանի պատմէին ամենայն բանքս
66 այսոքիկ։ Եւ եդին ամենեքեան որ
լսէին՝ ի սիրտս իւրեանց, եւ ասէին,
Զի՞նչ լինիցի մանուկս այս. եւ ձեռն
Տեառն էր ընդ նմա։

67 Եւ Զաքարիա հայր նորա լցաւ Հոգ-
ւով Սրբով, մարգարէացաւ եւ ասէ,
68 Օրհնեալ Տէր Աստուած Իսրայելի, զի
յայց ել մեզ, եւ արար փրկութիւն
69 ժողովրդեան իւրում։ Եւ յարոյց եղ-
ջիւր փրկութեան մեզ ի տանէ Դաւթի
70 ծառայի իւրոյ։ Որպէս խօսեցաւ բե-
րանով սրբոց որ յաւիտենից մարգա-
71 րէքն նորա էին. Փրկութիւն ի թշ-
նամեաց մերոց, եւ ի ձեռաց ամենայն
72 ատելեաց մերոց. Առնել ողորմութիւն
ընդ հարս մեր, եւ յիշել զուխտն իւր

73 սուրբ ։ Զերդումնն զոր երդուաւ Աբ-
74 րահամու հօր մերում՝ տալ մեզ , Ա-
ռանց երկիւղի , ի ձեռաց թշնամեաց
75 [1]մերոց փրկեալս , Պաշտել զնա սրբու-
թեամբ եւ արդարութեամբ առաջի նո-
րա զամենայն աւուրս կենաց մերոց ։
76 Եւ դու , մանուկ , մարգարէ Բարձրե-
լոյ կոչեսջիր . զի երթիցես առաջի ե-
րեսաց Տեառն պատրաստել զճանա-
77 պարհս նորա , Տալ գիտութիւն փրկու-
թեան ժողովրդեան նորա ի թողու-
78 թիւն մեղաց նոցա ։ Վասն գթութեանց
ողորմութեան Աստուծոյ մերոյ , որովք
այց [2]արասցէ մեզ Արեգակն ի բարձանց,
79 Երեւել որոց ի խաւարի եւ ի ստուերս
մահու նստէին , ուղղել զոտս մեր ի
ճանապարհս խաղաղութեան ։
80 Եւ մանուկն աճէր եւ զօրանայր
հոգւով , եւ էր յանապատս մինչեւ յօր
երեւելոյ նորա Իսրայելի ։

## ԳԼ. Բ

1 Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ
ել հրաման յԱւգոստոս կայսերէ աշ-
խարհագիր առնել ընդ ամենայն տիե-
2 զերս ։ Այս առաջին աշխարհագիր ե-
ղեւ ի գաւառապետութեան Ասորւոց Կիւ-
3 րենեայ ։ Եւ երթային ամենեքեան
մտանել յաշխարհագիր յիւրաքանչիւր
4 քաղաքի ։ Ել եւ Յովսէփ ի Գալիլեէ ի
քաղաքէ Նազարեթէ ի Հրէաստան , ի
քաղաք Դաւթի որ կոչի Բեթղեհեմ,
վասն լինելոյ նորա ի տանէ եւ յազգէ
5 Դաւթի , Մտանել յաշխարհագիր Մա-
րեմաւ հանդերձ զոր խօսեալն էր նմա ,
6 եւ էր յղի ։ Եւ եղեւ ի հասանելն նոցա
անդր , լցան աւուրք ծննդեան նորա ։
7 Եւ ծնաւ զորդին իւր զանդրանիկ , եւ
պատեաց ի խանձարուրս եւ եդ զնա
ի մսուր . զի ոչ գոյր նոցա տեղի յի-
ջեւանին ։
8 Եւ հովիւք էին ի տեղւոջն յայնմիկ
բացօթեագք , որք պահէին զպահպա-
նութիւնս գիշերոյ հօտից իւրեանց ։
9 Եւ հրեշտակ Տեառն երեւեցաւ նոցա ,
եւ փառք Տեառն ծագեցին առ նոսա ,
10 եւ երկեան երկեւղ մեծ ։ Եւ ասէ ցնո-
սա հրեշտակն , Մի՛ երկնչիք , զի ա-
ւետարանեմ ձեզ ուրախու-
թիւն մեծ , որ եղիցի ամենայն ժողո-
11 վրդեանն ։ Զի ծնաւ ձեզ այսօր Փրկիչ ,
որ է Օծեալ Տէր , ի քաղաքի Դաւթի ։
12 Եւ այս նշանակ ձեզ . գտանիցէք մա-
նուկ պատեալ ի խանձարուրս եւ եդ-
13 եալ ի մսուր ։ Եւ յանկարծակի եղեւ
ընդ հրեշտակին ընդ այնմիկ բազմու-
թիւն զօրաց երկնաւորաց , որ օրհնէին
14 զԱստուած եւ ասէին , Փառք ի բար-
ձունս Աստուծոյ , եւ յերկիր խաղա-
15 ղութիւն , ի մարդիկ հաճութիւն ։ Եւ
եղեւ իբրեւ վերացան ի նոցանէ հրեշ-
տակքն յերկինս , ասեն ցմիմեանս հո-
վիւքն, Եկայք երթիցուք մինչեւ ցԲեթ-
ղեհեմ, եւ տեսցուք զինչ է բանս այս
16 որ եղեւ , զոր Տէր եցոյց մեզ ։ Եւ ե-
կին փութանակի , եւ գտին զՄարիամ
եւ զՅովսէփ եւ զմանուկն եդեալ ի
17 մսուր ։ Եւ ծանեան վասն բանին որ
18 ասացաւ նոցա զմանկանէն . Եւ ամե-
նեքին որ լսէին՝ զարմանային վասն
բանիցն զոր խօսեցան ընդ նոսա հո-
19 վիւքն ։ Եւ Մարիամ զամենայն զբանս
զայսոսիկ պահէր եւ խելամուտ լինէր
20 ի սրտի իւրում ։ Եւ դարձան հովիւքն ,
փառաւոր առնէին եւ օրհնէին զԱս-
տուած վասն ամենայնի զոր լուան եւ
տեսին , որպէս պատմեցաւ նոցա ։
21 Եւ իբրեւ լցան աւուրք ութ թլփա-
տել [3]զնա , եւ կոչեցաւ անուն նորա
Յիսուս որ կոչեցեալ էր ի հրեշտակէն,
մինչչեւ յղացեալ էր [4]զնա յորովայնի ։
22 Եւ իբրեւ լցան աւուրք սրբութեան
[5]նոցա ըստ օրինացն Մովսիսի , ածին
զնա յԵրուսաղէմ յանդիման առնել
23 Տեառն , Որպէս եւ գրեալ է յօրէնս
Տեառն , թէ Ամենայն արու որ բանայ
24 զարգանդ՝ սուրբ Տեառն կոչեսցի ։ Եւ
տալ պատարագս ըստ ասացելոյն յօ-
րէնս Տեառն , զոյգս տատրակաց կամ
25 երկուս ձագս աղաւնեաց ։ Եւ ահա էր
այր մի յԵրուսաղէմ , որոյ անուն էր
Սիմէոն , եւ էր այրն այն արդար եւ
երկիւղած , եւ ակն ունէր մխիթա-
րութեանն Իսրայելի . եւ Հոգի Սուրբ
26 էր ի նմա ։ Եւ էր նորա հրաման առ-
եալ ի Հոգւոյն Սրբոյ մի՛ տեսանել
զմահ , մինչեւ տեսցէ զՕծեալն Տեառն ։
27 Եւ եկն Հոգւովն ի տաճարն . եւ իբրեւ

[1] Յօրին. պաշտել
[2] Ոմանք, արար
[3] Ոմանք, զմանուկն
[4] Յոմանս, նա
[5] Ոմանք, նորա

ածին ծնողքն զմանուկն Յիսուս առ-
նել նոցա ըստ սովորութեան օրինացն
28 ի վերայ նորա, Եւ նա առ ընկալաւ
զնա ի գիրկս իւր, եւ օրհնեաց զԱս-
29 տուած եւ ասէ, Արդ արձակես զծա-
ռայս քո, Տէր, ըստ բանի քում ի խա-
30 ղաղութիւն. Զի տեսին աչք իմ զփրր-
31 կութիւն քո, Զոր պատրաստեցեր ա-
32 ռաջի ամենայն ժողովրդոց։ Լոյս ի
յայտնութիւն հեթանոսաց, եւ փառս
33 ժողովրդեան քում Իսրայելի։ Եւ էին
[1]հայրն եւ մայր նորա զարմացեալ ի
34 վերայ բանիցն որ խօսէին զնմանէ։ Եւ
օրհնեաց զնոսա Սիմէոն, եւ ասէ
ցՄարիամ մայր նորա, Ահա սա կայ ի
գլորումն եւ ի կանգնումն բազմաց ի
մէջ Իսրայելի եւ ի նշան հակառակու-
35 թեան։ Եւ ընդ քո իսկ անձն անցցէ
սուր, զի յայտնեսցին ի բազում սրտից
խորհուրդք։
36 Եւ անդ էր Աննա մարգարէ դուստր
Փանուելի յազգէ Ասերայ. սա ինքն
անցեալ էր զաւուրբք բազմօք՝ կեցեալ
ընդ առն ամս եւթն ի կուսութենէ
37 իւրմէ։ Եւ էր այրի ամաց իբրեւ ութ-
սուն եւ չորից, որ ոչ մեկնէր ի տա-
ճարէն, այլ պահօք եւ աղօթիւք պաշ-
38 տէր զցայգ եւ զցերեկ։ Եւ սա ի նմին
ժամու յարուցեալ գոհանայր զՏեառնէ,
եւ խօսէր զնմանէ ընդ ամենեսին որ
ակն ունէին [2]փրկութեանն Երուսա-
ղեմի"։
39 Եւ իբրեւ կատարեցին զամենայն
ըստ օրինացն Տեառն, դարձան անդրէն
ի Գալիլեա ի քաղաքն իւրեանց Նա-
40 զարէթ։ Եւ մանուկն աճէր եւ զօրա-
նայր լի իմաստութեամբ, եւ շնորհք
Աստուծոյ էին ի վերայ նորա։
41 Եւ երթային ծնողքն նորա ամի ամի
42 յԵրուսաղէմ ի տօն զատկին։ Եւ իբրեւ
եղեն նորա ամք երկոտասան, ելանել
նոցա յԵրուսաղէմ ըստ սովորութեան
43 տօնին, Եւ կատարել զաւուրսն եւ
դառնալ անդրէն, մնաց Յիսուս մա-
նուկն յԵրուսաղէմ. եւ ոչ գիտացին
44 [3]ծնողքն նորա։ Կարծէին զնմանէ թէ
ընդ ուղեկիցսն իցէ. եկին իբրեւ ա-
ւուր միոյ ճանապարհ եւ խնդրէին զնա
45 ընդ [4]դրացիսն եւ ընդ ծանօթս։ Եւ
իբրեւ ոչ գտին, դարձան անդրէն յԵ-
46 րուսաղէմ խնդրել զնա։ Եւ եղեւ յետ
երից աւուրց գտին զնա ի տաճարին,
զի նստէր ընդ վարդապետսն, լսէր ի
47 նոցանէ եւ հարցանէր զնոսա։ Զար-
մանային ամենեքեան որ լսէին ի նմա-
նէ՝ ընդ իմաստութիւնն եւ ընդ պա-
48 տասխանիս նորա։ Եւ իբրեւ տեսին
զնա, սքանչացան. եւ ասէ ցնա մայրն
իւր, Որդեակ, զի՞նչ գործ գործեցեր
դու ընդ մեզ. ահաւասիկ հայր քո եւ
49 ես տառապեալք, խնդրէաք զքեզ։ Եւ
ասէ ցնոսա, Զի՞ խնդրէիք զիս, ո՞չ
գիտէիք եթէ ի տան Հօր իմոյ պարտ
50 է ինձ լինել։ Եւ նոքա ոչ իմացան
51 զբանն զոր խօսեցաւ ընդ նոսա։ Եւ
էջ ընդ նոսա եւ գնաց ի Նազարէթ,
եւ էր նոցա հնազանդ. եւ մայր նորա
պահէր զամենայն զբանսն ի սրտի իւ-
րում։
52 Եւ Յիսուս զարգանայր իմաստու-
թեամբ եւ հասակաւ եւ շնորհօք յԱս-
տուծոյ եւ ի մարդկանէ։

## ԳԼ. Գ

1 Ի հնգետասաներորդի ամի տէրու-
թեանն Տիբերեայ կայսեր, ի դատա-
ւորութեան Հրէաստանի Պիղատոսի
Պոնտացւոյ, եւ ի չորրորդապետութեան
Գալիլեացւոց Հերովդի, եւ ի Փիլիպ-
պոսի եղբօր նորա չորրորդապետութեան
Իտուրացւոց եւ Տրաքոնացւոց աշխար-
հին, եւ ի չորրորդապետութեան Լիւ-
2 սանեայ Աբիլենացւոյ, Եւ ի քահանա-
յապետութեան Աննայի եւ Կայիափայ,
եղեւ բան Աստուծոյ ի վերայ Յովհան-
նու որդւոյ Զաքարիայ յանապատի
3 անդ։ Եւ եկն յամենայն կողմն Յոր-
դանանու քարոզել մկրտութիւն ա-
պաշխարութեան ի թողութիւն մեղաց։
4 Որպէս եւ գրեալ է ի գիրս պատգա-
մաց Եսայեայ մարգարէի, Ձայն բար-
բառոյ յանապատի, Պատրաստ արարէք
զճանապարհ Տեառն, եւ ուղիղ արա-
5 րէք զշաւիղս նորա։ Ամենայն ձորք
լցցին, եւ ամենայն լերինք եւ բլուրք
խոնարհեսցին, եւ եղիցին դժուա-
րինքն ի դիւրինս, եւ առապարքն ի
6 հարթ ճանապարհս. Եւ տեսցէ ամե-
նայն մարմին զփրկութիւն Աստուծոյ։
7 Եւ ասէր ցժողովուրդսն ելեալս մկըր-

[1]Ոմանք, Յովսէփ
[2]Բազումք, փրկութեան յԵրուսաղէմ
[3]Ոմանք, Յովսէփ և մայր
[4]Յոյնն, ազգականան

*տել ի նմանէ, Ծնունդք իժից, ո՞ ցոյց*
*ձեզ փախչել ի բարկութենէն որ գալոց*
8 *է։ Արարէք այսուհետեւ պտուղս ար-*
*ժանիս ապաշխարութեան․ եւ մի՛*
*սկսանիցիք* [1]*ասել եթէ Ունիմք հայր*
*զԱբրահամ․ զայս ասեմ ձեզ, եթէ կա-*
*րող է Աստուած ի քարանցս յայսցանէ*
9 *յարուցանել որդիս Աբրահամու։ Բայց*
*անհաւասիկ տապար առ արմին ծառոց*
*կայ․ ամենայն ծառ որ ոչ առնէ պտուղ*
*տուղ բարուք՝ հատանի եւ ի հուր ար-*
10 *կանի։ Հարցանէին զնա ժողովուրդքն*
*եւ ասէին, Իսկ արդ զի՞նչ գործես-*
11 *ցուք։ Պատասխանի ետ եւ ասէ ցնո-*
*սա, Որ իցեն երկու հանդերձք՝ տացէ*
*զմին այնմ որ ոչն գուցէ․ եւ որ կայ-*
12 *ցէ կերակուր՝ նոյնպէս արասցէ։ Եկին*
*եւ մաքսաւորք մկրտել, եւ ասեն ցնա,*
13 *Վարդապետ, զի՞նչ գործեսցուք։ Եւ*
*նա ասէ ցնոսա, Մի՛ ինչ աւելի քան*
14 *զհրամայեալն ձեզ առնիցէք։ Հարցա-*
*նէին զնա եւ զինուորքն եւ ասէին,*
*Եւ մեք զի՞նչ գործեսցուք․ ասէ ցնո-*
*սա, Մի՛ զոք խռովեսջիք եւ մի՛ զոք*
*զրպարտիցէք, շատ լիցին ձեզ թոշակքն*
*ձեր։*
15 *Մինչ ակն ունէր ժողովուրդն եւ*
*խորհէին ամենեքեան ի սիրտս իւրեանց*
*վասն Յովհաննու, Միթէ սա՞ իցէ Քրիս-*
16 *տոսն, Պատասխանի* [2]*ետ ամենեցուն*
*եւ ասէ, Ես մկրտեմ զձեզ Ջրով, բայց*
*գայ զօրագոյն քան զիս, զորոյ չեմ բա-*
*ւական լուծանել զխրացս կօշկաց նորա, նա մկրտես-*
17 *ցէ զձեզ Հոգւով Սրբով եւ հրով, Որոյ*
*հեծանոցն ի ձեռին իւրում սրբել զկալ*
*իւր, եւ ժողովել զցորեանն ի շտեմա-*
*րանս իւր, եւ զյարդն այրեսցէ անշէջ*
18 *հրով։ Բազում եւ այլ ինչ մխիթարու-*
*թեամբ աւետարանէր ժողովրդեանն։*
19 *Բայց Հերովդէս չորրորդապետ յան-*
*դիմանեալ ի նմանէ վասն Հերովդիայ,*
[3]*կնոջ եղբօր իւրոյ, եւ վասն ամենայն*
*չարեացն զոր գործեաց Հերովդէս,*
20 *Յաւել եւ զայն եւս ի վերայ ամենայնի,*
*եւ եդ ի բանտի զՅովհաննէս։*
21 *Եւ եղեւ ի մկրտել ամենայն ժողո-*
*վրրդեանն եւ ընդ Յիսուսի մկրտելն*
22 *եւ կալ յաղօթս, բանալ երկնից, Եւ*
*իջանել Հոգւոյն Սրբոյ մարմնաւոր*
*տեսլեամբ իբրեւ զաղաւնի ի վերայ նո-*
*րա․ եւ դալ ձայն յերկնից որ ասէր,*
*Դու ես Որդի իմ սիրելի, ընդ քեզ*
*հաճեցայ։*
23 *Եւ ինքն Յիսուս էր ամաց իբրեւ*
*երեսնից սկսեալ,* [4]*որպէս որպէս եւ կար-*
*ծէր, որդի Յովսեփայ,* [5]*որ Յակով-*
*բայն,* *որ Հեղեայն, որ Մատաթեայն,*
24 *Որ Ղեւեայն, որ Մելքեայն, որ Յան-*
25 *նեայն, որ Յովսեփայն, Որ Մատթեայն,*
*որ Ամովսայն, որ Նաւումայն, որ Եզ-*
26 *ղեայն, որ Նանգեայն, Որ Մահաթայն,*
*որ Մատաթեայն, որ Սեմեայն, որ*
27 [6]*Յովսեքեայն, որ Յովդայն, Որ Յով-*
*նանայն, որ Րեսայն, որ Զօրաբաբե-*
28 *լին, որ Սաղաթիելին, որ Ներայն, Որ*
*Մեղքեայն, որ Ադդեայն, որ Կովսա-*
*մայն, որ Ելմովդադայն, որ Երայն,*
29 *Որ Յեսուայն, որ Եղիազարայն, որ*
*Յովրամայն, որ Մատթայն, որ Ղեւ-*
30 *եայն, Որ Սիմէոնին, որ Յուդային,*
*որ Յովսեփայն, որ Յովնամայն, որ*
31 *Եղիակիմայն, Որ Մեղթեայն, որ Մեն-*
*նայն, որ Մատաթայն, որ Նաթա-*
32 *նայն, որ Դաւթին, Որ Յեսսեայն, որ*
*Ովբեդայն, որ Բոոսայն, որ Սաղմով-*
33 *նայն, որ Նաասոնին, Որ Ամինադա-*
*բայն, որ Արամայն,* [7]*որ Ադմեայն, որ*
*Առնեայն,* *որ Եսրովմայն, որ Փարե-*
34 *սին, որ Յուդային, Որ Յակովբայն,*
*որ Իսահակայն, որ Աբրահամուն, որ*
35 *Թարային, որ Նաքովրայն, Որ Սե-*
*րուքայն, որ Ռագաւայն, որ Փաղե-*
36 *կայն, որ Եբերայն, որ Սաղային, Որ*
*Կայնանայն, որ Արփաքսադայն, որ*
37 *Սեմայն, որ Նոյին, որ Ղամեքայն, Որ*
*Մաթուսաղային, որ Ենովքայն, որ*
*Յարեդին, որ Մաղաղիելին, որ Կայ-*
38 *նանայն, Որ Ենովսայն, որ Սեթայն,*
*որ Ադամայն, որ Աստուծոյն։*

ԳԼ․ Դ

1 **Ե**ւ *Յիսուս լի Հոգւով Սրբով դարձաւ*
*ի Յորդանանէ, եւ վարէր Հոգւովն յա-*
2 *նապատ, Աւուրս քառասուն փորձեալ*
*ի Սատանայէ․ եւ ոչ եկեր եւ ոչ արբ*
*յաւուրսն յայնոսիկ․ եւ ի կատարելն*
*նոցա քաղցեաւ։*

[1] Յոյն., ասել յանձինս
[2] ի Յոյնն, ետ Յովհաննէս
[3] Ոմանք, որպէս եւ ոմանք ի Հայ. օրինակաց, կնոջ Փիլիպպոսի.

[4] Յոյն., եւ էր,
[5] ի Յոյնն պակասէ
[6] Ոմանք, Յովսեփայն
[7] ի բազումս պակասէ

3 Եւ ասէ ցնա Սատանայ, Եթէ Որդի
ես Աստուծոյ, ասա քարիդ այդմիկ զի
4 հաց լիցի։ Պատասխանի ետ նմա Յի-
սուս եւ ասէ, Գրեալ է եթէ Ոչ հացիւ
միայն կեցցէ մարդ, այլ ամենայն բա-
նիւ Աստուծոյ։
5 Եւ հանեալ [1]զնա ի լեառն մի բարձր՝
եցոյց նմա զամենայն թագաւորու-
թիւնս աշխարհի ի վայրկեան ժամա-
6 նակի։ Եւ ասէ ցնա Սատանայ, Քեզ
տաց զայս ամենայն իշխանութիւն եւ
զփառս սոցա, զի ինձ տուեալ է, եւ
7 ում կամիմ՝ տամ զսա։ Արդ դու եթէ
անկեալ երկիր պագանիցես առաջի իմ,
8 քեզ եղիցի ամենայն։ Պատասխանի ետ
նմա Յիսուս եւ [2]ասէ, Գրեալ է, Եր-
կիր պագցես Տեառն Աստուծոյ քում,
եւ զնա միայն պաշտեսցես։
9 Եւ ած զնա յԵրուսաղէմ, եւ կացոյց
ի վերայ աշտարակի տաճարին, եւ ասէ
ցնա, Եթէ Որդի ես Աստուծոյ, արկ
10 զքեզ աստի ի վայր. Զի գրեալ է եթէ
Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է
11 վասն քո պահել զքեզ. Զի ի վերայ
ձեռաց բարձցեն զքեզ, մի՛ երբեք հար-
12 ցես զքարի զոտն քո։ Պատասխանի
ետ նմա Յիսուս եւ ասէ, Ասացեալ է
թէ Ոչ փորձեսցես զՏէր Աստուած քո։
13 Եւ կատարեալ զամենայն փորձու-
թիւնս Սատանայի՝ ի բաց եկաց ի նմա-
նէ առ ժամանակ մի։
14 ԲԿ. Եւ դարձաւ Յիսուս զօրու-
թեամբ Հոգւոյն ի Գալիլեա. եւ ել
համբաւ զնմանէ ընդ ամենայն կող-
15 մանս գաւառին։ Եւ նա ուսուցանէր
ի ժողովուրդս նոցա փառաւորեալ յա-
մենեցունց։
16 Եւ եկն ի Նազարէթ ուր սնեալն էր.
եւ եմուտ ըստ սովորութեան իւրում
17 յաւուր շաբաթու [3]ի ժողովուրդն։ Եւ
ետուն նմա գիրս զԵսայեայ մարգա-
րէի. եւ յարեաւ ընթեռնուլ, եւ իբրեւ
եբաց զգիրսն՟, եգիտ զայն տեղի յո-
18 րում գրեալն էր, Հոգի Տեառն ի վե-
րայ իմ, վասն որոյ եւ օծ իսկ զիս,
աւետարանել աղքատաց առաքեաց զիս,
19 բժշկել զբեկեալս սրտիւ, Քարոզել գեր-
եաց զթողութիւն եւ կուրաց տեսա-
նել, արձակել զվիրաւորս ի թողու-
թիւն, քարոզել զտարեկան Տեառն ըն-
20 դունելի։ Եւ խփեալ զգիրսն՝ ետ ցպաշ-
տօնեայն, եւ նստաւ. եւ ամենեցուն
որ ի ժողովրդեանն էին աչք ի նա հա-
21 յէին։ Եւ սկսաւ ասել ցնոսա, Այսօր
22 լցան գիրքս այս յականջս ձեր։ Եւ ա-
մենեքին վկայէին նմա, եւ զարմա-
նային ընդ բանս շնորհացն որ ելանէին
ի բերանոյ նորա, եւ ասէին, Ո՞չ սա է
23 որդին Յովսեփայ։ Եւ ասէ ցնոսա, Ա-
պաքէն ասիցէք առ իս զառակս զայս,
Բժիշկ, բժշկեա զանձն քո. որչափ
լուաք զոր արարեր ի Կափառնայում՝
24 արա եւ աստ ի քում գաւառի։ Եւ ասէ,
Ամէն ասեմ ձեզ թէ Չէ մարգարէ ըն-
25 դունելի ի քաղաքի իւրում։ Արդարեւ
ասեմ ձեզ, զի բազում այրիք էին յա-
ւուրս Եղիայի ի մէջ Իսրայելի, յորժամ
փակեցանն երկինք զերիս ամս եւ զվեց
ամիս, եւ եղեւ սով մեծ ընդ ամենայն
26 երկիր։ Եւ ոչ առ մի ի նոցանէ առա-
քեցաւ Եղիա, բայց միայն ի Սարեփթա
27 Սիդոնացւոց առ կին մի այրի։ Եւ
բազում բորոտք էին յԻսրայելի առ Ե-
ղիսէիւ մարգարէիւ. եւ ոչ ոք ի նո-
ցանէ սրբեցաւ, բայց միայն Նէեման
28 Ասորի։ Եւ լցան ամենեքին բարկու-
թեամբ ի ժողովրդեանն, իբրեւ լսէին
29 զայս. Եւ յարուցեալ հանին զնա ար-
տաքոյ քաղաքին, եւ ածին զնա մինչեւ
յարտեւան լերինն յորոյ վերայ քաղաքն
նոցա շինեալ էր՝ զահավէժ առնել զնա։
30 Եւ նա անցեալ ընդ մէջ նոցա՝ գնայր։
31 ԲԲ. Եւ էջ ի Կափառնայում ի քա-
ղաքն Գալիլեացւոց, եւ ուսուցանէր
32 զնոսա ի շաբաթս։ Եւ զարմանային
ընդ վարդապետութիւն նորա, զի իշ-
33 խանութեամբ էր բան նորա։ Եւ էր
ի ժողովրդեանն այր մի զոր ունէր այս
զիւի պղծոյ, եւ աղաղակեաց ի ձայն
34 մեծ, Ասէ, Թուլացո, զի՞ կայ մեր եւ
քո, Յիսուս Նազովրեցի, եկիր կորու-
սանե՞լ զմեզ. գիտեմք զքեզ ով ես,
35 Սուրբդ Աստուծոյ։ Սաստեաց ի նա Յի-
սուս եւ ասէ, Պապանձեաց եւ ել ի
դմանէ. զգետնեաց զնա դեւն ի միջի
անդ եւ ել ի նմանէ, եւ ոչինչ մնաս-
36 եաց նմա։ Եւ եղեն զարմանալիք ի
վերայ ամենեցուն, խօսէին ընդ մի-
մեանս եւ ասէին, Զի՞նչ է բանս այս,

[1] Ոմն+, զնա Սատանայ
[2] Ոմն+, ասէ, Երթ յետս իմ, Սատանայ, զի
[3] Յոյն, ի ժողովուրդն, և յարեաւ ընթեռնուլ. (17) Եւ ետուն նմա գիրս զԵսայեայ մարգարէի, և իբրեւ եբաց

զի իշխանութեամբ եւ զօրութեամբ
37 սաստէ այսոց պղծոց, եւ ելանեն։ Եւ
երթայր հռչակ զնմանէ ընդ ամենայն
տեղիս շուրջ զգաւառաւն։
38 Եւ յարուցեալ ի ժողովրդենէ անտի՝
39 եմուտ ի տուն Սիմովնի։ Զոքանչ Սի-
մովնի տագնապէր ջերմամբ մեծաւ.
40 եւ աղաչեցին զնա վասն նորա։ Եկաց
առ նմա, սաստեաց ջերմանն, եւ ե-
թող զնա. եւ վաղվաղակի յարեաւ եւ
պաշտէր զնոսա։
41 Եւ ընդ արեւուն մտանել, ամենե-
քին որոց էին հիւանդք ի պէսպէս
ցաւս՝ բերէին զնոսա առ նա. եւ նա
իւրաքանչիւր ումեք ի նոցանէ դնէր
42 ձեռս եւ բժշկէր զնոսա։ Ելանէին եւ
դեւք ի բազմաց, աղաղակէին եւ ա-
սէին եթէ Դու ես Որդի Աստուծոյ. եւ
նա սաստէր եւ ոչ տայր նոցա թոյլ խօ-
սել, զի գիտէին զնա թէ Քրիստոսն է։
43 ԲԴ. Եւ իբրեւ տիւ եղեւ, ել գնաց
յանապատ տեղի, եւ ժողովուրդքն
խնդրէին զնա. եկին մինչեւ առ նա
եւ արգելուին զնա, զի մի՛ գնասցէ ի
44 նոցանէ։ Եւ նա ասէ ցնոսա, Եւ այլոց
քաղաքաց պարտ է ինձ աւետարանել
զարքայութիւնն Աստուծոյ, զի յայն
45 իսկ առաքեցայ։ Եւ քարոզէր ի ժողո-
վուրդսն Գալիլեացւոց։

## ԳԼ. Ե

1 Եւ եղեւ ի խռնել զնովաւ ժողովր-
դեանն եւ լսել զբանն Աստուծոյ, եւ
ինքն կայր առ ծովակին Գեննեսարե-
2 թայ։ Եւ ետես երկուս նաւս զի կային
առ ծովակին, եւ ձկնորսքն ելեալ ի
3 նոցանէ՝ լուանային զգործիսն։ Ել նա
ի մի նաւուցն որ էր Սիմովնի, եւ ա-
ղաչեաց զնա սակաւիկ մի տանել ի
ներքս ի ցամաքէն. նստաւ եւ ուսու-
ցանէր ի նաւէ անտի զժողովուրդսն։
4 Եւ իբրեւ լռեաց ի խօսիցն, ասէ
ցՍիմովն, Խաղացո ի խորն, եւ արկէք
5 զգործիս ձեր յորս։ Պատասխանի ետ
Սիմովն եւ ասէ ցնա, Վարդապետ,
զամենայն գիշերս աշխատ եղեաք եւ
ոչինչ կալաք. բայց վասն քո բանիդ
6 արկցուք զգործիսս։ Զայս իբրեւ արա-
րին, փակեցին ի ներքս բազմութիւն
ձկանց յոյժ, մինչեւ պատառէին ուռ-
7 կանք նոցա։ Եւ ակնարկէին որսակ-
ցացն ի միւս նաւն՝ գալ օգնել նոցա.
եւ եկին, եւ լցին երկոքին նաւքն
8 մինչեւ մերձ յընկղմել նոցա։ Իբրեւ
ետես Սիմովն Պետրոս, անկաւ առ
ծունկս Յիսուսի եւ ասէ, Ի բաց գնա
յինէն, Տէր, զի այր մեղաւոր եմ ես։
9 Քանզի ահ պատեաց զնա եւ զամե-
նեսեան որ ընդ նմայն էին՝ վասն որ-
10 սոյ ձկանցն զոր ըմբռնեցին, Նոյնպէս
եւ զՅակովբոս եւ զՅովհաննէս զոր-
դիսն Զեբեդեայ, որ էին որսակիցք
Սիմովնի. եւ ասէ ցՍիմովն Յիսուս,
Մի՛ երկնչիր, յայսմ հետէ զմարդիկ որ-
11 սայցես ի կեանս։ Եւ հանեալ զնաւն
ի ցամաք՝ թողին զամենայն եւ գնացին
զհետ նորա։
12 ԲԴ. Եւ եղեւ ի հասանելն նորա ի
մի ի քաղաքացն, ահա այր մի լի բո-
րոտութեամբ իբրեւ ետես զՅիսուս,
անկեալ ի վերայ երեսաց աղաչեաց զնա
եւ ասէ, Տէր, եթէ կամիս, կարող ես
13 զիս սրբել։ Ձգեաց զձեռն իւր, հասոյց
ի նա եւ ասէ, Կամիմ, սրբեաց. եւ
վաղվաղակի գնաց ի նմանէ բորոտու-
14 թիւնն։ Եւ նա պատուիրեաց նմա մի՛
ումեք ասել, այլ թէ Երթ ցոյց զանձն
քո քահանային, եւ մատո պատարագ
վասն սրբութեան քո, որպէս եւ հրա-
մայեաց Մովսէս ի վկայութիւն նոցա։
15 Եւ յորդէր առաւել բանն զնմանէ. եւ
ժողովէին ժողովուրդք բազումք լսել
եւ բժշկել ի հիւանդութենէ իւրեանց։
16 Եւ նա խոյս տայր յանապատ տեղիս
եւ կայր յաղօթս։
17 ԲԵ. Եւ եղեւ ի միում աւուրց եւ
ինքն ուսուցանէր, եւ փարիսեցիքն
եւ օրինացն վարդապետք նստէին, որ
ժողովեալ էին յամենայն քաղաքաց
Գալիլեացւոց եւ Հրէաստանի եւ Ե-
րուսաղեմի. եւ զօրութիւն Տեառն էր
18 ի բժշկել զնոսա։ Եւ ահա արք բերէին
մահճօք զայր մի որ էր անդամալոյծ,
եւ խնդրէին զնա մուծանել ի ներքս
19 եւ դնել առաջի նորա։ Եւ իբրեւ ոչ
գտանէին թէ ընդ որ մուծանիցեն զնա
ի ներքս վասն ամբոխին, ելին ի տա-
նիս եւ ի ցուցոյն կախեցին զնա, եւ
իջուցին մահճօքն հանդերձ ի մէջ ա-
20 ռաջի Յիսուսի։ Եւ տեսեալ զհաւատս
նոցա՝ ասէ ցնա, Այր դու, թողեալ
21 լիցին քեզ մեղք քո։ Սկսան խորհել
դպիրքն եւ փարիսեցիք, եւ ասեն,

Ո՞ է սա որ խօսի զհայհոյութիւնս, ո՞վ
կարէ թողուլ զմեղս բայց միայն Ա-
22 տուած ։ Իբրեւ գիտաց Յիսուս զխոր-
հուրդս նոցա, պատասխանի ետ եւ
ասէ ցնոսա, Զի՞ խորհիք ի սիրտս ձեր ։
23 Զի՞նչ դիւրագոյն է, ասել՝ Թողեալ լի-
ցին քեզ մե՞ղք քո, եթէ ասել, Արի եւ
24 գնա ։ Այլ զի գիտասջիք եթէ իշխա-
նութիւն ունի Որդի մարդոյ յերկրի
թողուլ զմեղս, (ասէ ցանդամալոյծն,)
Քեզ ասեմ, Արի, ա՛ռ զմահիճս քո եւ
25 երթ ի տուն քո ։ Եւ առժամայն յա-
րուցեալ առաջի ամենեցուն, ա՛ռ զիւ-
րեւ յորոյ վերայ անկեալն դնէր, գնաց
ի տուն իւր, եւ փառաւոր առնէր զԱս-
26 տուած ։ Զարմանք կալան զամենե-
սին, եւ փառաւոր առնէին զԱստուած.
լի եղեն ահիւ, եւ ասեն եթէ Տեսաք
այսօր նոր նշանս ։
27 ԲՁ. Եւ յետ այնորիկ ել անտի եւ
ետես մաքսաւոր մի որում անուն էր
Ղեւի, զի նստէր ի մաքսաւորութեան.
28 եւ ասէ ցնա, Եկ զկնի իմ ։ Եւ թող-
եալ զամենայն՝ յարեաւ գնաց զկնի նո-
29 րա ։ Եւ արար ընդունելութիւն մեծ
նմա Ղեւի ի տան իւրում. եւ էր ժո-
ղովուրդ բազում մաքսաւորաց եւ այ-
30 լոց որ էին բազմեալ ընդ նոսա ։ Եւ
տրտնջէին փարիսեցիքն եւ դպիրքն
նոցա [1]զնմանէ առ աշակերտսն նորա
եւ ասէին, Ընդէ՞ր ընդ մաքսաւորս
եւ ընդ մեղաւորս ուտէք եւ ըմպէք ։
31 Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնո-
սա, Ոչինչ են պիտոյ բժիշկք ողջոց,
32 այլ՝ հիւանդաց ։ Ոչ եկի կոչել զար-
դարս, այլ՝ զմեղաւորս յապաշխարու-
թիւն ։
33 Եւ նոքա ասեն ցնա, Ընդէ՞ր աշա-
կերտքն Յովհաննու պահեն ստէպ եւ
խնդրուածս առնեն, նոյնպէս եւ փա-
րիսեցւոցն, եւ քոյքդ ուտեն եւ ըմ-
34 պեն ։ Եւ նա ասէ ցնոսա, Մի թէ կա-
րո՞ղ էք մանկանց առագաստի, մինչ փե-
սայն ընդ նոսա իցէ, հրամայել պա-
35 հել ։ Եկեսցեն աւուրք յորժամ բարձցի
ի նոցանէ փեսայն, ապա պահեսցեն
36 յաւուրսն յայնոսիկ ։ Ասաց եւ առակ
մի առ նոսա թէ Ոչ ոք արկանէ ի նոր
հանդերձէ ի վերայ հնացեալ ձորձոյ.
ապա թէ ոչ՝ եւ զնորն պատառէ, եւ
ընդ հնոյն չմիաբանի կապերտն որ ի
37 նորոյն ։ Եւ ոչ ոք արկանէ գինի նոր
ի տիկս հինս. ապա թէ ոչ՝ պայթու-
ցանէ գինին նոր զտիկսն հինս, ինքն
38 հեղու եւ տիկքն կորնչին ։ Այլ գինի
նոր ի տիկս նորս արկանելի է, եւ եր-
39 կոքին պահին ։ Եւ ոչ ոք ըմպէ զհինն
[2]եւ կամիցի զնորն, քանզի ասէ թէ
Հինն քաղցրագոյն է ։

## Գլ. Զ

1 ԲԷ. Եւ եղեւ ի շաբաթու [3]յերկրոր-
դում առաջնոյն՝՝ անցանել նմա ընդ ար-
տորայսն, եւ աշակերտքն նորա կոր-
զէին հասկ, շփէին ընդ ափ եւ ուտէին ։
2 Եւ ոմանք ի փարիսեցւոցն ասեն ցնո-
սա, Զի՞նչ գործէք զոր չէ օրէն ի շա-
3 բաթու ։ Պատասխանի ետ նոցա Յի-
սուս եւ ասէ, Ձիցէ՞ ընթերցեալ ձեր
զոր արարն Դաւիթ, յորժամ քաղ-
ցեաւն ինքն եւ որ ընդ նմայն էին ։
4 Զիա՞րդ եմուտ նա ի տունն Աստուծոյ,
եւ զհացն զառաջաւորութեան եկեր
եւ ետ այնոցիկ որ ընդ նմայն ՚էին.
զոր ոչ էր օրէն ումեք ուտել, բայց
5 միայն [4]քահանայապետիցն ։ Եւ ասէ
ցնոսա, Տէր է Որդի մարդոյ եւ շա-
բաթու ։
6 Եւ եղեւ ի միւսում շաբաթու մտա-
նել նմա ի ժողովուրդն եւ ուսու-
ցանել. եւ էր անդ այր մի եւ ձեռն
7 իւր աջ գօսացեալ էր ։ Եւ սպասէին
նմա դպիրքն եւ փարիսեցիք թէ ի շա-
բաթուն բժշկիցէ՞, զի գտանիցեն չա-
8 րախօսութիւն զնմանէ ։ Եւ նա գիտէր
զխորհուրդս նոցա. ասէ ցայրն որոյ
ձեռնն գօսացեալ էր, Արի, անց ի մէջ.
9 եւ նա յարուցեալ եկաց ։ Ասէ ցնոսա
Յիսուս, Հարցից ինչ զձեզ, Զի՞նչ ար-
ժան է ի շաբաթու, բարի՞ ինչ առնել
եթէ չար գործել, ոգի մի ապրեցու-
10 ցանե՞լ թէ կորուսանել ։ Եւ հայեցեալ
շուրջ զամենեքումբք [5]զայրագին՝ ասէ
ցնա, Ձգեա զձեռն քո. եւ նա ձգեաց,
եւ հաստատեցաւ ձեռն նորա [3]իբրեւ
11 զմիւսն՝՝ ։ Նոքա լցան յիմարութեամբ,

[1]ի Յոմանս գոլոռէ

[2]Ոմանք, և վազվազակի
[3]Յոմանս գոլոռէ
[4]Յոմն, քահանայիցն. տես Մատթ. ԺԲ. 4, Մարկ. Բ. 26
[5]ի Եոռոմս գոլոռէ

եւ խօսէին ընդ միմեանս թէ զի՞նչ առ-
նիցեն Յիսուսի։
12 ԳԿ. Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ
այնոսիկ ել ի լեառն կալ յաղօթս, եւ
հանէր զգիշերն ի գլուխ յաղօթսն Աս-
13 տուծոյ։ Եւ իբրեւ այգ եղեւ, կոչեաց
զաշակերտսն իւր, եւ ընտրեաց ի նո-
ցանէ երկոտասանս, զորս եւ առաք-
14 եալս անուանեաց։ ԶՍիմոն զոր եւ
Պետրոսն անուանեաց, եւ զԱնդրէաս
զեղբայր նորին, եւ զՅակոբոս, եւ
զՅովհաննէս, եւ զՓիլիպպոս, եւ զԲար-
15 թողիմէոս, Եւ զՄատթէոս, եւ զԹով-
մաս, եւ զՅակոբոս Ալփեայ, եւ զՍի-
16 մոն զկոչեցեալն Նախանձայոյզ, Եւ
զՅուդա Յակոբեայ, եւ զՅուդա Իս-
կարիովտացի, որ եղեւ իսկ մատնիչ։
17 Եւ իջեալ նոքօք հանդերձ ի տեղի մի
տափարակ, եւ ժողով աշակերտացն
նորա եւ բազմութիւն յոյժ ժողովր-
դեանն յամենայն Հրէաստանէ, եւ յԵ-
րուսաղեմէ [1]եւ յայնմ կողմանէ", եւ
ի ծովեզերէն Տիւրոսի եւ Սիդոնի.
18 Որ եկին լսել ի նմանէ եւ բժշկել ի հի-
ւանդութենէ իւրեանց. եւ նեղեալքն
19 յայսոց պղծոց բժշկէին։ Եւ ամենայն
ժողովուրդն խնդրէր մերձենալ ի նա,
զի զօրութիւն [2]բազում ելանէր ի նմա-
նէ եւ բժշկէր զամենեսին։
20 Եւ նա ամբարձ զաչս իւր յաշա-
կերտսն իւր եւ ասէ, Երանի աղքա-
տաց [1]հոգւով, զի ձեր է արքայու-
21 թիւնն Աստուծոյ։ Երանի որ քաղցեալ
[3]են այժմ, զի յագեսցին". երանի որ
22 [4]լան այժմ, զի ծիծաղեսցին"։ Երանի
է ձեզ յորժամ ատիցեն զձեզ մարդիկ,
եւ յորժամ որոշիցեն զձեզ եւ նախա-
տիցեն, եւ հանիցեն անուն չար զձէնջ
23 վասն Որդւոյ մարդոյ։ Ուրախ լիջիք
յաւուր յայնմիկ եւ ցնծասջիք, զի ահա
վարձք ձեր բազում են յերկինս. ըստ
նմին օրինակի առնէին մարգարէիցն
24 հարք իւրեանց. Բայց վա՜յ ձեզ մեծա-
տանցդ, զի ընկալայք զմխիթարու-
25 թիւն ձեր։ Վա՜յ ձեզ որ յագեալդ էք
այժմ, զի քաղցիցէք. վա՜յ ձեզ որ ծի-
ծաղիքդ այժմ, զի սգայցէք, եւ լայցէք։

[1] Ի բազումս պակասէ
[2] Ի Յունին պակասէ
[3] Բազումք, իցէք այժմ, զի յագեսջիք, որպէս եւ օրինակ մի Հայերէն
[4] Յոյնն, լայքդ այժմ, զի ծիծաղեսջիք

26 վա՜յ ձեզ յորժամ բարի ասիցեն զձէնջ
[5]ամենայն մարդիկ, զի այդպէս առ-
նէին սուտ մարգարէիցն հարք նոցա։
27 Այլ ձեզ ասեմ որ լսէքդ, Սիրեցէք
զթշնամիս ձեր, բարի արարէք ատե-
28 լեաց ձերոց։ Օրհնեցէք զանիծիչս ձեր,
աղօթս արարէք ի վերայ նեղչաց ձե-
29 րոյ։ Որ հարկանէ զծնօտ քո, մատո
նմա եւ զմեւսն. եւ որ հանէ ի քէն
զբաճկոն քո, մի՛ արգելուր ի նմանէ
30 եւ [6]զշապիկս։ Ամենայնի որ խնդրէ ի
քէն՝ տուր, եւ զոր ինչ հանէ ոք ի քէն՝
31 մի՛ պահանջեր։ Եւ որպէս կամիք թէ
արասցեն ձեզ մարդիկ, այնպէս արաս-
32 ջիք եւ դուք նոցա։ Եւ եթէ սիրէք
դուք զսիրելիս ձեր, զի՞նչ շնորհ է
ձեր, զի եւ մեղաւորք սիրեն զսիրելիս
33 իւրեանց։ Եւ եթէ բարի առնէք բա-
րերարաց ձերոց, ո՞ր շնորհ է ձեր, զի
34 եւ մեղաւորք զնոյն գործեն։ Եւ եթէ
տայք փոխ այնոցիկ յորոց ակն ունի-
ցիք առնուլ, ո՞ր շնորհ է ձեր, քանզի
եւ մեղաւորք մեղաւորաց փոխ տան,
35 զի առցեն անդրէն զկշիռն։ Բայց սի-
րեցէք զթշնամիս ձեր, եւ բարի արա-
րէք [2]ատելեաց ձերոց". եւ տուք փոխ՝
ուստի ոչ ակն ունիցիք առնուլ. եւ
եղիցին վարձք ձեր բազում, եւ եղի-
ջիք որդիք Բարձրելոյ. զի նա քաղցր
է ի վերայ չարաց եւ ապաշնորհաց։
36 Եղերուք գթածք, որպէս եւ Հայրն
37 ձեր գթած է։ Մի՛ դատիք եւ ոչ դա-
տիցիք. մի՛ պատժէք եւ ոչ պատժիցիք,
38 արձակեցէք եւ արձակիցիք։ Տուք եւ
տացի ձեզ. չափ բարւոք, թաթաղուն,
շարժուն, զեղուն տացեն ի գոգս ձեր.
նովին չափով որով չափէք՝ չափեսցի
ձեզ։
39 Ասաց եւ առակ մի առ նոսա, Միթէ
կարիցէ՞ կոյր կուրի առաջնորդել, ո՞չ
ապաքէն երկոքին ի խորխորատ ան-
40 կանիցին։ Ոչ է աշակերտ լաւ քան
զվարդապետ իւր. ամենայն կատար-
եալն եղիցի իբրեւ զվարդապետ իւր։
41 Զի՞ տեսանես զշիւղ յական եղբօր քո,
եւ ի քում ական զգերանդ ոչ նշմա-
42 րես։ Կամ զիա՞րդ կարես ասել ցեղ-
բայր քո, Եղբայր, թող հանից զշիւղ
յականէ քումմէ, եւ դու ի քում ական
զգերանդ ոչ տեսանես. կեղծաւոր,

[5] Յոմանս պակասէ
[6] Յոյնն, զշապիկ քո

հան նախ զգերանդ յականէ քումմէ,
եւ ապա հայեսջիր հանել զշիւղ յականէ
43 եղբօր քո։ Զի ոչ է ծառ բարի որ առ-
նէ պտուղ չար, եւ ոչ դարձեալ ծառ
44 չար՝ որ առնէ պտուղ բարի։ Զի իւ-
րաքանչիւր ծառ ի պտղոյ իւրմէ ճանա-
չի. զի ոչ եթէ ի փշոց քաղեն թուզ,
45 եւ ոչ ի մորենւոյ կթեն խաղող։ Մարդ
բարի ի բարի գանձուց սրտի իւրոյ
բղխէ զբարի, եւ մարդ չար [1]ի չարէն
բղխէ զչար. քանզի ի յաւելուածոյ սրր-
46 տին խօսի բերան նորա։ Զի՞ կոչէք
զիս Տէր, Տէր, եւ զոր ասեմն ոչ առ-
47 նէք։ Ամենայն որ գայ առ իս, եւ լսէ
զբանս իմ եւ առնէ զնոսա, ցուցից ձեզ
48 ում նման է։ Նման է առն որ շինիցէ
տուն, որ փորեաց եւ խորեաց, եւ եդ
հիմն ի վերայ վիմի. ի յառնել հեղեղաց
բաղխեաց գետ զտունն, եւ ոչ կարաց
շարժել զնա. զի հաստատեալ էր հիմնն
49 ի վերայ վիմի։ Իսկ որ լսէ զբանս իմ
եւ ոչ առնէ, նման է առն, որ շինիցէ
տուն ի վերայ հողոյ առանց հիման.
զոր բաղխեաց գետ, եւ վաղվաղակի
անկաւ, եւ եղեւ կործանումն տանն
այնորիկ մեծ։

## ԳԼ. Է

1 ԳԲ. Եւ իբրեւ կատարեաց զամե-
նայն բանս իւր ի լսելիս ժողովրդեանն,
2 եմուտ ի Կափառնայում։ Հարիւրապե-
տիուրումն ծառայ չարաչար հիւան-
դացեալ՝ մերձ էր ի վախճանել, որ էր
3 նմա պատուական։ Իբրեւ լուաւ զՅի-
սուսէ, առաքեաց զծերսն ի Հրէից,
աղաչել զնա զի եկեսցէ ապրեցուսցէ
4 զծառայն նորա։ Եւ նոքա եկեալ առ
Յիսուս՝ աղաչէին զնաստէպ եւ ասէին
թէ Արժանի է որում զշնորհս զայս
5 առնես։ Զի սիրէ զազգս մեր, եւ զժո-
6 ղովրդանոցն նա շինեաց մեզ։ Եւ Յի-
սուս գնաց ընդ նոսա. իբրեւ ոչինչ
կարի հեռի էր ի տանէն, յղեաց առ նա
հարիւրապետն բարեկամս, եւ ասէ
ցնա, Տէր, մի՛ ինչ աշխատ լինիր, զի
չեմ բաւական եթէ ընդ յարկաւ իմով
7 մտանիցես. Վասն որոյ եւ ոչ զանձն
համարեցայ արժանի առ քեզ գալոյ.
այլ ասա բանիւ, եւ բժշկեսցի մանուկս
8 իմ։ Քանզի եւ ես այր մի եմ կարգեալ
ընդ իշխանութեամբ. ունիմ ընդ ինեւ
զինուորս, եւ ասեմ սմա, Երթ, եւ
երթայ. եւ այլում թէ Եկ, եւ գայ.
եւ ծառայի իմում թէ Արա զայս, եւ
9 առնէ։ Եւ իբրեւ լուաւ զայս Յիսուս,
զարմացաւ, դարձաւ առ ժողովուրդն
որ երթային զհետ նորա եւ ասէ,
[2]Ամէն ասեմ ձեզ թէ եւ ոչ յԻսրայէլի
10 այսչափ հաւատս գտի։ Եւ դարձան
անդրէն պատգամաւորքն ի տուն, եւ
գտին զծառայն հիւանդ բժշկեալ։
11 ԳԳ. Եւ եղեւ ի վաղիւն երթայր ի
քաղաք մի որում անուն էր Նային.
երթային ընդ նմա եւ [3]աշակերտք նո-
12 րա՝ եւ ժողովուրդք բազում։ Իբրեւ
մերձ եղեւ ի դուռն քաղաքին, եւ ահա
եհանէր մեռեալ մի որդի միամօր մօր
իւրոյ, եւ նա էր այրի. եւ ժողովուրդ
13 բազում քաղաքին էր ընդ նմա։ Իբրեւ
եւես զնա Տէր, գթացաւ ի նա եւ
14 ասէ, Մի՛ լար։ Եւ մատուցեալ մեր-
ձեցաւ ի դագաղն. եւ որք բարձեալն
տանէին՝ դադարեցին. եւ ասէ, Պա-
15 տանեակ դու, քեզ ասեմ, արի։ Կանգ-
նեցաւ եւ նստաւ մեռեալն եւ սկսաւ
16 խօսել. եւ ետ զնա ցմայր իւր։ Եւ ահ
կալաւ զամենեսին, եւ փառաւոր առ-
նէին զԱստուած եւ ասէին թէ Մար-
գարէ ոմն մեծ յարուցեալ է ի միջի մե-
րում, եւ թէ Այց արար Աստուած ժո-
17 ղովրդեան իւրում [2]ի բարութիւն։ Եւ
ել զրոյցս այս ընդ ամենայն Հրէաս-
տան վասն նորա, եւ ընդ ամենայն
կողմանս աշխարհին։
18 Եւ պատմեցին Յովհաննու աշա-
կերտքն իւր վասն ամենայնի այսորիկ։
19 Եւ կոչեաց առ ինքն երկուս ոմանս
յաշակերտացն իւրոց Յովհաննէս, ա-
ռաքեաց [4]առ Տէր՝ եւ ասէ, Դո՞ւ ես
որ գալոցն ես, եթէ այլում ակն կալ-
20 ցուք։ Եւ եկեալ արքն առ նա՝ ասեն,
Յովհաննէս մկրտիչ առաքեաց զմեզ
առ քեզ եւ ասէ, Դո՞ւ ես որ գալոցն
21 ես, եթէ այլում ակն կալցուք։ Եւ ի
նմին ժամու բժշկեաց զբազումս ի հի-
ւանդութեանց եւ ի հարուածոց եւ
յայսոց չարաց, եւ կուրաց՝ բազմաց
22 շնորհեաց տեսանել։ Պատասխանի ետ

[1] Ոմանք, ի չար գանձուց սրտի իւրոյ

[2] Ի բազումս պակասէ
[3] Ոմանք, յաշակերտաց նորա ոչ սակաւք
[4] Ոմանք, առ Յիսուս

[1]նոցա եւ ասէ, Երթայք պատմեցէք
Յովհաննու զոր տեսէքդ եւ լուայք,
զի կոյրք տեսանեն, եւ կաղք գնան,
բորոտք սրբին, խուլք լսեն, մեռեալք
23 յառնեն, աղքատք աւետարանին. Եւ
երանի իցէ որ ոչ գայթակղիցի յիս։
24 Եւ իբրեւ գնացին հրեշտակքն Յով-
հաննու, սկսաւ խօսել ընդ ժողո-
վուրդսն վասն Յովհաննու, Զի՞նչ ե-
լէք յանապատն տեսանել, եղէ՞գն շար-
25 ժուն ի հողմոյ։ Այլ զի՞նչ ելէք տե-
սանել, ա՞յր ի հանդերձս փափկութեան
զարդարեալ. ահաւանիկ որք ի հան-
դերձս երեւելիս եւ ի փափկութեան
26 են՝ յարքունիս են։ Այլ զի՞նչ ելէք
տեսանել. մարգարէ՞. այո, ասեմ ձեզ,
27 առաւել եւս քան զմարգարէ։ Զի սա
է վասն որոյ գրեալն է թէ, Ահա ա-
ռաքեմ զհրեշտակ իմ առաջի քո, որ
յարդարեսցէ զճանապարհ քո առաջի քո։
28 [2]Ամէն ասեմ ձեզ, Մեծ ի ծնունդս
կանանց մարգարէ քան զՅովհաննէս
ոչ ոք է, բայց փոքրիկն յարքայութեան
Աստուծոյ մեծ է քան զնա։
29 Եւ ամենայն ժողովուրդն իբրեւ
լուաւ եւ մաքսաւորքն, արդարացու-
ցին զԱստուած, զի մկրտեցան ի մկր-
30 տութիւնն Յովհաննու։ Իսկ փարի-
սեցիքն եւ օրինականքն զխորհուրդն
Աստուծոյ անարգեցին յանձինս իւ-
րեանց, զի ոչ մկրտեցան ի նմանէ։
31 [3]Արդ ո՞ւմ նմանեցուցից զմարդիկ
ազգիս այսորիկ, եւ ո՞ւմ իցեն նմա-
32 նողք։ Նման են մանկտւոյ որ ի հրա-
պարակս նստիցին, կարդայցեն զմի-
մեանս եւ ասիցեն, Փողս հարաք ձեզ
եւ ոչ կաքաւեցէք. ողբացաք եւ ոչ
33 լացէք։ Եկն Յովհաննէս մկրտիչ, [4]ոչ
ուտէր եւ ոչ ըմպէր", եւ ասէիք, Դեւ
34 գոյ ի նմա։ Եկն Որդի մարդոյ, ուտէ
եւ ըմպէ, եւ ասէք, Ահա այր կերող
եւ արբեցող, բարեկամ մաքսաւորաց
35 եւ մեղաւորաց։ Եւ արդարացաւ ի-
մաստութիւն [5]յորդւոց իւրոց։
36 ԳԴ. Աղաչէր զնա ոմն ի փարիսե-
ցւոցն զի կերիցէ ճաշ ընդ նմա. եւ
մտեալ ի տուն փարիսեցւոյն՝ բազմե-
37 ցաւ։ Եւ կին մի էր ի քաղաքին մե-
ղաւոր. իբրեւ գիտաց թէ բազմեալ է
ի տան փարիսեցւոյն, բերեալ շիշ մի
38 իւղոյ ազնուի, կայր յետոյ առ ոտս
նորա, լայր, եւ արտասուօքն սկսաւ
թանալ զոտս նորա, եւ հերով գլխոյ
իւրոյ ջնջէր. եւ համբուրէր զոտս նո-
39 րա եւ օծանէր իւղովն։ Եւ տեսեալ
փարիսեցւոյն որ կոչեաց զնա՝ ասէր
ընդ միտս իւր, Սա թէ մարգարէ ոք
էր, ապա գիտէր թէ ով եւ որպիսի
ոք կին մերձեցեալ ի սա. զի մեղաւոր
40 է։ Պատասխանի ետ Յիսուս եւ ասէ
ցնա, Սիմովն, ունիմ ինչ ասել քեզ.
եւ նա ասէ, Ասա, Վարդապետ. եւ
41 ասէ, Երկու պարտապանք էին ու-
րումն փոխատուի. միոյն պարտէր հինգ
հարեւր դահեկան, եւ միւսոյն՝ յիսուն։
42 Եւ իբրեւ ոչ գոյր նոցա հատուցանել,
երկոցունց շնորհեաց. արդ ասա, ո՞վ
43 առաւել սիրեսցէ զնա։ Ասէ Սիմովն,
Ինձ այսպէս թուի եթէ որում զբա-
զումն շնորհեաց. եւ նա ասէ ցնա,
44 Ուղիղ դատեցար։ Եւ դարձեալ ի կինն
կողմն, ասէ ցՍիմովն, Տեսանե՞ս զայս
կին, մտի ի տուն քո, ջուր ոտից իմոց
ոչ ետուր. իսկ սա արտասուօք իւ-
րովք եթաց զոտս իմ, եւ [6]հերով իւրով"
45 ջնջեաց։ Համբոյր մի դու ոչ ետուր
ինձ, սա ուստի յորմէ հետէ մտեալ
եմ, ոչ դադարեաց ի համբուրելոյ զոտս
46 իմ։ Իւղով զգլուխ իմ ոչ օծեր, սա
47 իւղով անուշիւ [7]օծ։ Վասն որոյ ասեմ
քեզ, Թողեալ լիցին սմա մեղք իւր բա-
զումք, զի յոյժ սիրեաց. զի որում
շատ թողացու՝ շատ սիրէ, եւ որում
48 սակաւ՝ սակաւ։ Եւ ասէ ցնա, Թողեալ
49 լիցին քեզ մեղք քո։ Եւ սկսան որ
բազմեալն էին ընդ նմա՝ ասել ընդ միտս
իւրեանց, Ո՞վ է սա որ զմեղս թողու։
50 Եւ նա ասէ ցկինն, Հաւատք քո կե-
ցուցին զքեզ, երթ ի խաղաղութիւն։

ԳԼ. Ը

1 ԳԵ. Եւ եղեւ յետ այնորիկ եւ ինքն
շրջէր ընդ քաղաքս եւ ընդ գեղս, քա-
րոզէր եւ աւետարանէր զարքայութիւն

---

[1] Ոմանք, նոցա Յիսուս
[2] Ոմանք, Զի
[3] Ոմանք, Եւ ասէ Տէր, Արդ
[4] Ոմանք, որպէս և [illegible] Հոյ., ոչ ուտէր հաց և ոչ ըմպէր գինի
[5] Բազումք, յամենայն որդւոց

[6] Ոմանք, հերով գլխոյ իւրոյ
[7] Բազումք, օծ զոտս իմ

Աստուծոյ, և երկոտասանքն ընդ նմա.
2 Եւ կանայք ոմանք որ բժշկեալ էին
յայսոց չարաց և ի հիւանդութեանց.
Մարիամ որ կոչէր Մագդաղենացի,
3 յորմէ եւթն դեւ ելեալ էր: Եւ Յո-
վաննա կին Քուզայ հազարապետին Հե-
րովդի, և Շուշան և այլք բազումք,
որք պաշտէին [1]զնա յընչից իւրեանց:
4 Եւ ի ժողովել բազում ժողովրդոց,
և ըստ քաղաքաց քաղաքաց եկելոցն
5 առ նա, ասէ առակաւ, Ել սերմանա-
ցան սերմանել զսերմանիս իւր. և ի
սերմանելն իւրում էր որ անկաւ առ
ճանապարհաւ և եղեւ կոխան, և
6 թռչունք երկնից կերան զնա: Եւ այլն
անկաւ յապառաժի. և ընդ բուսա-
7 նելն՝ չորացաւ առ ի չգոյէ հիւթոյ: Եւ
այլն անկաւ ի մէջ փշոց, և ընդ նմին
8 բուսեալ փշոցն՝ հեղձուցին զնա: Եւ
այլն անկաւ յերկիր բարի [2]և պա-
րարտ", և բուսեալ արար պտուղ հա-
րիւրապատիկ. զայս իբրեւ խօսեցաւ,
ասէ, Որ ունիցի ականջս լսելոյ լուիցէ:
9 Հարցանէին զնա աշակերտքն թէ
10 Զի՞նչ իցէ առակն: Եւ նա ասէ, Ձեզ
տուեալ է գիտել զխորհուրդս արքա-
յութեան Աստուծոյ, բայց այլոցն ա-
ռակօք. զի տեսցեն և մի՛ տեսցեն,
լուիցեն և մի՛ իմասցին:
11 Բայց առակն այս ինչ է. Սերմն բանն
12 Աստուծոյ է: Եւ որք առ ճանապար-
հաւն՝ այնոքիկ են որ լսեն, և ապա
գայ Սատանայ հանէ զբանն ի սրտից
նոցա, զի մի՛ հաւատասցեն և ապ-
13 րեսցին: Եւ որք յապառաժին, որք
յորժամ լսիցեն, խնդութեամբ ընդու-
նին զբանն, և արմատս ոչ ունիցին.
որք առ ժամանակ մի հաւատան, և
ի ժամանակի փորձութեան հեռանան:
14 Իսկ որ ի մէջ փշոցն անկաւ՝ նոքա են,
որ իբրեւ լսեն [2]զբանն, և ի հոգս և
ի մեծութիւն և ի ցանկութիւն աշ-
խարհիս զբաղեալ, հեղձնուն և ան-
15 պտուղ լինին: Իսկ որ յերկիրն պա-
րարտ, որոց բարւոք և զուարթագին
սրտիւ լուեալ զբանն՝ ընդունին, և
տան պտուղ համբերութեամբ:
16 Ոչ ոք լուցանէ ճրագ, և թաքու-
ցանէ ընդ կարասեաւ կամ դնէ ընդ
մահճօք. այլ ի վերայ աշտանակի դնէ,
17 զի որ մտանեն՝ զլոյս տեսցեն: Զի՞ք
ինչ ծածուկ որ ոչ յայտ լիցի. և ոչ
գաղտնի՝ որ ոչ ծանիցի և եկեսցէ ի
18 յայտ: Տեսէք այսուհետեւ զիարդ լսէք.
զի որ գուցէ՝ տացի նմա, և որ ոչն
գոյցէ, և զոր կարծէն թէ ունիցի՝
բարձցի ի նմանէ:
19 Եկին առ նա մայրն և եղբարք իւր,
և ոչ կարէին հասանել ի նա վասն
20 բազմութեանն: Ազդ եղեւ նմա և ա-
սեն, Մայր քո և եղբարք քո կան
արտաքոյ և կամին զքեզ տեսանել:
21 Եւ [3]ասէ ցնոսա, Մայր իմ և եղբարք
իմ սոքա են, որ զբանն Աստուծոյ
լսեն և առնեն:
22 Գ.Ջ. Եւ եղեւ ի միում աւուրց ինքն
ել ի նաւ և աշակերտքն նորա, և
ասէ ցնոսա, Եկայք, անցցուք յայնկոյս
23 ծովակիս, և գնացին: Եւ մինչդեռ
նաւէին, ի քուն եմուտ. և էջ մրրիկ
հողմոյ ի ծովակն և ուռնոյր, և տագ-
24 նապէին: Մատուցեալ զարթուցին զնա
և ասեն, Վարդապետ, վարդապետ,
կորնչիմք աւասիկ. և նա յարուցեալ
սաստեաց հողմոյն և խռովութեան
ջրոցն, և հանդարտեցին, և եղեւ
25 խաղաղութիւն: Ասէ ցնոսա, Ո՞ւր են
հաւատք ձեր. և զահի հարեալ զար-
մացան և ասէին ցմիմեանս, Ո՞վ ար-
դեւք իցէ սա, զի և հողմոց և ջրոց
հրաման տայ, և հնազանդին սմա:
26 Եւ նաւեցին իջին յաշխարհն [4]Գեր-
գեսացւոց, որ է յայնկոյս հանդէպ Գա-
27 լիլեայ: Եւ ընդ ելանելն նորա ի ցա-
մաք, պատահեաց այր մի ի քաղաքէն,
յորում էին դեւք. և բազում ժամա-
նակս չէր հանդերձ զգեցեալ և ոչ ի
28 տան բնակեալ, այլ ի գերեզմանս: Եւ
տեսեալ զՅիսուս, աղաղակեաց և ան-
կաւ առաջի նորա, և ասէ մեծաձայն,
Զի՞ կայ իմ և քո, Յիսուս, Որդի Աս-
տուծոյ բարձրելոյ, աղաչեմ զքեզ, մի՛
29 տանջեր զիս: Քանզի հրաման տայր
այսոյն պղծոյ ելանել ի մարդոյ անտի.
զի բազում ժամանակս յափշտակեալ
էր զնա, և կապէր ի շղթայս, և պա-
հէր յերկաթս, և խզէր զկապանսն,
30 և վարէր ի դեւէն յանապատ: Եհարց
ցնա Յիսուս և ասէ, Զի՞նչ անուն է

[1] Ոմանք, զնոսա
[2] ի բազումս պակասէ
[3] ի բազումս, նա պատասխանի ետ և ասէ
[4] Ոմանք, Գադարացւոց

*քեզ ։ Եւ նա ասէ , Լէգէոն ․ զի դեւք*
31 *բազումք մտեալ էին ի նա ։ Եւ աղա-*
*չէին զնա զի մի՛ հրաման տացէ նոցա*
32 *երթալ յանդունդս ։ Եւ էր անդ երա-*
*մակ մի խոզից բազմաց արօտական ի*
*լերինն , եւ աղաչեցին զնա զի հրաման*
*տացէ նոցա մտանել ի նոսա ․ եւ հրա-*
33 *մայեաց նոցա ։ Եւ ելեալ դեւքն յառ-*
*նէն մտին ի խոզեանն , եւ դիմեաց ե-*
*րամակն ի դահէ անտի ի ծովակն եւ*
34 *հեղձաւ ։ Իբրեւ տեսին խոզարածքն*
*զիրսն որ եղեն՝ փախեան , եւ պատ-*
35 *մեցին ի քաղաքին եւ յագարակսն ։ Եւ*
*իբրեւ ելին տեսանել զգործսն , եկին*
*առ Յիսուս , եւ գտին զայրն՝ ուստի*
*դեւքն ելեալ էին , զգեցեալ եւ զգաս-*
*տացեալ նստէր առ ոտսն Յիսուսի , եւ*
36 *երկեան ։ Պատմեցին նոցա որոց տեսեալ*
*էր թէ զիարդ փրկեցաւ դիւա-*
37 *հարն ։ Եւ աղաչէր զնա ամենայն բազ-*
*մութիւնն շուրջ զկողմամբքն [1]Գերգե-*
*սացւոց՝ գնալ [2]ի սահմանացն նոցա˝ ,*
*քանզի ահիւ մեծաւ տագնապէին ․ եւ*
*նա մտեալ ի նաւ՝ դարձաւ անդրէն ։*
38 *Աղաչէր զնա այրն ուստի դեւքն ելեալ*
*էին՝ շրջել ընդ նմա ․ արձակեաց [3]զնա*
39 *եւ ասէ , Դարձ ի տուն քո եւ պատ-*
*մեա զոր միանգամ արար քեզ Աս-*
*տուած ․ գնաց ի քաղաքն եւ քարոզէր*
*զոր ինչ արար նմա Յիսուս ։*
40 *Եւ իբրեւ դարձաւ անդրէն Յիսուս ,*
*ընկալաւ զնա ժողովուրդն , քանզի ա-*
41 *մենեքեան ակն ունէին նմա ։ Եւ ահա*
*եկն այր մի որում անուն էր Յայրոս ,*
*եւ նա էր իշխան ժողովրդեանն , ան-*
*կեալ առ ոտսն Յիսուսի՝ աղաչէր զնա*
42 *մտանել ի տուն նորա ․ Զի դուստր*
*միամօր էր նորա ամաց իբրեւ երկո-*
*տասանից , եւ էր մերձ ի մահ ․ եւ ընդ*
*երթալն նորա ժողովուրդքն նեղէին*
*զնա ։*
43 *Եւ կին մի էր ի տեռատեսութեան*
*արեան յամաց երկոտասանից , [4]որում*
*ոչ էր լինել հնար յումեքէ բժշկել ։*
44 *Մատուցեալ յետոյ մերձեցաւ ի քղանցս*
*հանդերձի նորա ․ եւ նոյնժամայն ե-*
45 *կաց բղխումն արեան նորա ։ Եւ ասէ*
*Յիսուս , Ո՞վ է որ մերձեցաւն յիս ․*
*իբրեւ ամենեքեան ուրանային , ասէ*
*Պետրոս եւ որ ընդ նմա էին , Վար-*
*դապետ , ժողովուրդքդ պնդեն եւ նե-*
46 *ղեն [5]զքեզ ։ Եւ ասէ Յիսուս , Ոմն մեր-*
*ձեցաւ յիս , քանզի գիտացի եթէ զօ-*
47 *րութիւն ել յինէն ։ Իբրեւ ետես կինն*
*եթէ ոչ ծածկեցաւ [6]ի նմանէ, եկն դո-*
*ղալով եւ անկաւ առաջի նորա , թէ*
*վասն որոյ իրաց մերձեցաւ ի նա՝ պատ-*
*մեաց առաջի ամենայն ժողովրդեանն ,*
*եւ թէ որպէս բժշկեցաւ առժամայն ։*
48 *Եւ ասէ , Քաջալերեաց , դուստր , հա-*
*ւատք քո կեցուցին զքեզ , երթ ի խա-*
*ղաղութիւն ։*
49 *Եւ մինչդեռ նա խօսէր , գայ ոմն ի*
*տանէ ժողովրդապետին եւ ասէ ցնա ,*
*Մեռաւ դուստրն քո , մի՛ ինչ աշխատ*
50 *աներ [7]զդա ։ Իսկ Յիսուս իբրեւ լուաւ ,*
*պատասխանի ետ նմա եւ ասէ , Մի՛*
*երկնչիր , միայն հաւատա , եւ կեցցէ ։*
51 *Եւ մտեալ ի տունն՝ ոչ զոք եթող մտա-*
*նել , բայց միայն զՊետրոս եւ զՅա-*
*կոբոս եւ զՅովհաննէս եւ զհայր ման-*
52 *կանն եւ զմայր նորա ։ Լային ամենե-*
*քեան եւ կոծէին զնա ․ եւ նա ասէ ,*
*Մի՛ լայք , զի չէ մեռեալ , այլ ննջէ ։*
53 *Եւ նոքա ծաղր առնէին զնա , զի գի-*
54 *տէին թէ մեռաւ ։ Եւ նորա հանեալ*
55 *զամենեսին արտաքս , կալաւ զձեռանէ*
*նորա , բարբառեցաւ եւ ասէ , Արի ,*
56 *կաց , մանուկ դու ։ Եւ դարձաւ ոգի*
*նորա , եւ կանգնեցաւ վաղվաղակի ․*
57 *եւ հրամայեաց տալ նմա ուտել ։ Եւ*
*զարմացան ծնողքն նորա ․ եւ նա պատ-*
*ուիրէր մի՛ ումեք ասել որ ինչ եղեւն ։*

ԳԼ․ Թ

1 Գէ․ **Ե**ւ *կոչեցեալ [8]զերկոտասան ա-*
*ռաքեալսն˝ , ետ նոցա զօրութիւն եւ*
*իշխանութիւն ի վերայ ամենայն դի-*
2 *ւաց , եւ բժշկել զհիւանդութիւնս ։ Եւ*
*առաքեաց զնոսա քարոզել զարքայու-*
*թիւնն Աստուծոյ եւ բժշկել զախտա-*
3 *ժէտս ։ Եւ ասէ ցնոսա , Մի՛ ինչ բառ-*

---

[1]Ոմանք, Գադարացւոց
[2]Յոյնն, ի նոցանէ
[3]Ոմանք, զնա Յիսուս
[4]Բազումք, որ ի բժիշկս ծախեալ էր զամենայն ինչս իւր ․ որում
[5]Ոմանք, զքեզ, և դու ասես եթէ Ո՞վ մերձեցաւ յիս
[6]Ի Յունին պակասէ
[7]Բազումք, զվարդապետդ
[8]Ոմանք, զերկոտասանսն, այլք՝ զերկոտասան աշակերտս իւր

նայք ի ճանապարհ, մի՛ գաւազան եւ
մի՛ մախաղ, մի՛ հաց եւ մի՛ արծաթ,
4 մի՛ երկուս հանդերձս ունիցիք: Եւ
յոր տուն մտանիցէք, անդ ագջիք եւ
5 անտի գնասջիք: Եւ որք ոչ ընդունի-
ցին զձեզ, յորժամ ելանիցէք ի քաղա-
քէն յայնմանէ, զփոշի ոտից ձերոց թօ-
6 թափեսջիք ի վկայութիւն նոցա: Եւ
ելեալ շրջէին [1]ընդ քաղաքս եւ" ընդ
գեղս, աւետարանէին եւ բժշկէին ընդ
ամենայն տեղիս:
7 Լուաւ Հերովդէս չորրորդապետ
զգործս ամենայն, եւ զարմանայր
8 վասն ասելոյն յոմանց եթէ Յովհաննէս
յարեաւ ի մեռելոց, եւ յոմանց՝ թէ Ե-
ղիա յայտնեցաւ, եւ յայլոց՝ թէ Մար-
9 գարէ ոմն յառաջնոցն յարեաւ: Ասէ
Հերովդէս, ԶՅովհաննէս ես գլխատե-
ցի, իսկ սա ո՞վ իցէ զորմէ զայսպիսի
իրս լսեմ. եւ խնդրէր տեսանել զնա:
10 Դարձան առաքեալքն եւ պատմեցին
նմա զամենայն զոր արարին. եւ առ-
եալ զնոսա՝ խուսեաց առանձինն ի տե-
ղի անապատ քաղաքի միոյ, որում
11 անուն էր Բեթսայիդա: Եւ ժողո-
վուրդքն իբրեւ գիտացին, գնացին զհետ
նորա. եւ ընկալեալ զնոսա՝ խօսէր
ընդ նոսա վասն արքայութեան Աս-
տուծոյ, եւ որոց պէտք էին բժշկու-
թեան՝ բժշկէր:
12 Եւ օրն սկսաւ տարաժամել. մատ-
եան երկոտասանքն եւ ասեն զնա, Ար-
ձակեա զժողովուրդդ, զի երթեալ
շուրջ ի գեղսն եւ յագարակս, հանգի-
ցեն եւ գտցեն կերակուր, զի աստ
13 յանապատի տեղւոջ եմք: Ասէ ցնոսա,
Դուք տուք դոցա ուտել. եւ նոքա
ասեն, Ոչ գոյ մեր աւելի քան զհինգ
նկանակ՝ եւ զերկուս ձկունս, բայց
եթէ երթիցուք գնեսցուք բաւական
14 ժողովրդեանդ կերակուր: Քանզի էին
արք իբրեւ հինգ հազար: Ասէ ցաշա-
կերտսն, Բազմեցուցէք զդոսա դասս
15 դասս՝ յիսուն յիսուն: Եւ արարին այն-
պէս, եւ բազմեցուցին զամենեսեան:
16 Եւ առեալ զհինգ նկանակն եւ զերկուս
ձկունսն՝ հայեցաւ յերկինս, օրհնեաց
եւ եբեկ եւ տայր ցաշակերտսն՝ ար-
17 կանել ժողովրդեանն: Կերան եւ յա-
գեցան ամենեքեան, եւ բարձին զնշխ-
խարս կոտորոցն երկոտասան սակառի:
18 ԴԿ. Եւ եղեւ ի կալն նորա յաղօթս
առանձինն, էին ընդ նմա եւ աշա-
կերտքն նորա. եհարց զնոսա եւ ասէ,
Զո՞ ոք ասեն զինէն ժողովուրդքն թէ
19 իցեմ: Եւ նոքա պատասխանի տուեալ
ասեն, ԶՅովհաննէս մկրտիչ. եւ այլք՝
ԶԵղիա. իսկ այլք թէ Մարգարէ ոք
20 յառաջնոցն յարեաւ: Ասէ ցնոսա, Իսկ
դուք զո՞ ոք ասէք զինէն թէ իցեմ.
պատասխանի ետ Պետրոս, եւ ասէ,
21 ԶՔրիստոսն Աստուծոյ: Նա սաստեաց
ի նոսա, եւ պատուիրեաց մի՛ ումեք
22 ասել զայն: Եւ ասէ թէ Պարտ է Որ-
դւոյ մարդոյ բազում չարչարել եւ ա-
նարգել ի քահանայապետից եւ ի ծերոց
եւ ի դպրաց, եւ սպանանել եւ յերիր
23 աւուր յառնել: Եւ ասէր առ ամենե-
սին, Եթէ ոք կամի զհետ իմ գալ, ու-
րասցի զանձն եւ առցէ զխաչ իւր հա-
24 նապազ եւ եկեսցէ զհետ իմ: Զի որ
կամիցի զանձն իւր կեցուցանել՝ կո-
րուսցէ զնա, եւ որ կորուսցէ զանձն
25 իւր վասն իմ՝ կեցուսցէ զնա: Զի՞նչ
օգուտ է մարդոյ եթէ [2]զաշխարհ շա-
հեսցի, եւ զանձն իւր կորուսցէ կամ
26 տուժեսցի: Զի որ ամօթ համարեսցի
զիս եւ զբանս իմ, զնա եւ Որդի մար-
դոյ յամօթ արասցէ յորժամ գայցէ փա-
ռօք իւրովք եւ Հօր եւ հրեշտակաց
27 սրբոց: Բայց արդարեւ ասեմ ձեզ եթէ
են ոմանք ի դոցանէ որ այդր կան,
որք մի՛ ճաշակեսցեն զմահ, մինչեւ
տեսցեն զարքայութիւնն Աստուծոյ:
28 Եւ եղեւ յետ այսց բանից իբրեւ
աւուրք ութ, առեալ զՊետրոս եւ
զՅակոբոս եւ զՅովհաննէս՝ ել ի լեառն
29 կալ յաղօթս: Եւ ի կալն նմա յաղօթս՝
եղեւ տեսիլ երեսաց նորա այլակերպ,
եւ փոխեցաւ հանդերձ նորա եւ եղեւ
30 սպիտակ փայլուն: Եւ ահա արք երկու
խօսէին ընդ նմա, որ էին Մովսէս եւ
31 Եղիա, Երեւեալ փառօք, եւ ասէին
զելսն նորա զոր կատարելոց էր յԵ-
32 րուսաղէմ: Իսկ Պետրոս եւ որ ընդ
նմայն էին՝ ծանրացեալ էին քնոյ, զար-
թեան եւ տեսին զփառսն նորա եւ զեր-
33 կուս արսն որ կային առ նմա: Եւ ե-
ղեւ ի մեկնելն նոցա ի նմանէ, ասէ Պետ-
րոս ցՅիսուս, Վարդապետ, բարւոք է

[1] ի քաղաքս գեղս

[2] Յոմն, զաշխարհ ամենայն

*մեզ աստ լինել, եւ արասցուք երիս
տաղաւարս, մի քեզ եւ մի Մովսիսի
եւ մի Եղիայի, եւ ոչ գիտէր զինչ խօ-
34 սէր։ Եւ իբրեւ զայս ասաց, եկն ամպ
եւ հովանի եղեւ ի վերայ նոցա. եւ
երկեան ի մտանելն նոցա ընդ ամպովն։
35 Ձայն եղեւ յամպոյն եւ ասէ, Դա է
Որդի իմ [1]ընտրեալ, դմա լուարուք։
36 Եւ ընդ լինել բարբառոյն՝ գտաւ Յի-
սուս միայն. եւ նոքեանք լռեցին, եւ
ոչ ումեք պատմեցին յաւուրսն յայնո-
սիկ եւ ոչինչ յորոց տեսինն։
37 ԴԲ. Եւ եղեւ ի վաղիւն մինչ իջա-
նէին նոքա ի լեռնէ անտի, ընդ առաջ
38 եղեւ նմա ժողովուրդ բազում։ Եւ ահա
այր մի ի ժողովրդենէ անտի աղաղա-
կեաց եւ ասէ, Վարդապետ, աղաչեմ
զքեզ, հայեաց յորդի իմ, զի միամօր է
39 ինձ։ Եւ ահա այս հարկանի ի նմա, եւ
յանկարծ գոչէ. եւ զարկուցանէ զնա
եւ թաւալեցուցանէ զնա եւ փրփրե-
ցուցանէ, եւ հազիւ մեկնի ի նմանէ՝
40 խորտակեալ զնա. Եւ աղաչեցի զա-
շակերտսն քո զի հանցեն զնա, եւ ոչ
41 կարացին։ Պատասխանի ետ Յիսուս
եւ ասէ, Ով ազգ անհաւատ եւ թեւր,
մինչեւ յե՞րբ եղէց ընդ ձեզ եւ անսայ-
42 ցեմ ձեզ. մատո այսր զորդին քո։ Եւ
մինչդեռ մատչէր, զարկոյց զնա դեւն
43 եւ չարժլեաց։ Սաստեաց Յիսուս այ-
սոյն պղծոյ, եւ բժշկեաց զմանուկն
44 եւ ետ զնա ցհայր իւր։ Եւ զարմա-
նային ամենեքեան ի վերայ մեծամե-
ծացն Աստուծոյ։
Եւ ի զարմանալն ամենեցուն ի վե-
րայ ամենայնի զոր առնէր, ասէ ցա-
շակերտսն իւր, Դիք դուք ի լսելիս
ձեր զբանս զայսոսիկ, զի Որդի մարդոյ
45 մատնելոց է ի ձեռս մարդկան։ Եւ նո-
քա ոչ գիտէին զբանն, եւ էր ծածկեալ
ի նոցանէ զի մի՛ զիտասցեն. եւ եր-
կնչէին հարցանել ցնա վասն բանին
այնորիկ։
46 Եմուտ խորհուրդ ի նոսա թէ ո՛ ար-
47 դեւք մեծ իցէ ի նոցանէ։ Յիսուս իբ-
րեւ ծանեաւ զխորհուրդս սրտից նոցա,
առ մանուկ մի, կացոյց ի մէջ նոցա
48 առ իւր, Եւ ասէ ցնոսա, Որ ոք ըն-
կալցի զմանուկս զայս յանուն իմ՝ զիս
ընդունի, եւ որ զիս ընդունիցի՝ ըն-
դունի զառաքիչն իմ. զի որ փոքրիկն
է յամենեսին ի ձեզ՝ նա եղիցի մեծ։
49 ԴԳ. Պատասխանի ետ Յովհաննէս
եւ ասէ, Վարդապետ, տեսաք զոմն
որ յանուն քո դեւս հանէր, եւ արգե-
50 լաք զնա, զի ոչ շրջի ընդ մեզ։ Ասէ
ցնոսա Յիսուս, Մի՛ արգելուք զնա,
զի որ ոչն է [2]ձեր թշնամի՝ ի [2]ձեր
կողմն է։
51 Եւ եղեւ ի կատարել աւուրց վերա-
նալոյ նորա, եւ ինքն զերեսս հաս-
52 տատեաց երթալ յԵրուսաղէմ։ Եւ ա-
ռաքեաց հրեշտակս առաջի երեսաց իւ-
րոց. եւ իբրեւ չոգան, մտին ի գեղ
մի Սամարացւոց՝ պատրաստել ինչ նմա։
53 Եւ ոչ ընկալան զնա, զի դէմ եդեալ
54 էր նորա երթալ յԵրուսաղէմ։ Իբրեւ
տեսին աշակերտքն, Յակոբոս եւ Յով-
հաննէս, ասեն, Տէր, կամի՞ս զի ա-
սասցուք, եւ իջցէ հուր յերկնից եւ
55 սատակեսցէ [3]զնոսա։ Դարձաւ սաս-
տեաց [4]ի նոսա եւ ասէ, Ոչ գիտէք
56 որոյ հոգւոյ էք դուք. Զի Որդի մար-
դոյ ոչ եկն զոգիս մարդկան կորու-
սանել, այլ՝ կեցուցանել. եւ գնացին
57 յայլ գեղ"։ Եւ մինչդեռ երթային նոքա
ի ճանապարհի, ասէ ոմն ցնա, Եկից
58 զկնի քո յոր վայր եւ երթիցես։ Ասէ
ցնա Յիսուս, Աղուեսուց որջք գոն,
եւ թռչնոց երկնից՝ զագարք, եւ Որդ-
ւոյ մարդոյ ոչ գոյ ուր զգլուխ դիցէ։
59 Ասէ ցմիւս եւս, Եկ զկնի իմ. եւ
նա ասէ, Տէր, հրաման տուր ինձ եր-
60 թալ նախ թաղել զհայր իմ։ Ասէ ցնա
Յիսուս, Թող զմեռեալսն թաղել զմեռ-
եալս իւրեանց, եւ դու երթ պատմեա
զարքայութիւնն Աստուծոյ։
61 Ասէ եւ այլ ոմն, Եկից զկնի քո,
Տէր, բայց նախ հրաման տուր ինձ
62 հրաժարել ի տանէ իմմէ։ Ասէ ցնա Յի-
սուս, Ոչ ոք արկանէ ձեռն զմաճով
եւ հայիցի յետս, եթէ յաջողեալ իցէ
արքայութեան Աստուծոյ։*

ԳԼ. Ժ

1 ԴԴ. *Յետ այսորիկ երեւեցոյց Տէր
եւ այլ եւս [5]եւթանասուն եւ երկուս".*

[1]Ոմն․, սիրելի

[2]Ոմն․, մեր
[3]Ոմն․, զնոսա, որպէս արար Եղիա
[4]Ոմն․, ի նոսա։ (56) Եւ գնացին յայլ գեղ
[5]Բազում․, եւթանասունս

եւ առաքեաց զնոսա երկուս երկուս
առաջի իւր յամենայն քաղաքս եւ ի
2 տեղիս ուր ինքն երթալոց էր։ Եւ ասէ
ցնոսա, Հունձք բազում են եւ մշակք
սակաւ. արդ աղաչեցէք զՏէր հնձոց,
3 զի հանցէ մշակս ի հունձս իւր։ Եր-
թայք, ահա առաքեմ զձեզ իբրեւ զգա-
4 ռինս ի մէջ գայլոց։ Մի՛ բառնայք քսակ,
մի՛ մախաղ, մի կօշիկս, եւ ի ճանա-
5 պարհի ումեք ողջոյն մի՛ տայցէք։ Յոր
տուն մտանիցէք, նախ ասասջիք թէ
6 Ողջոյն տանս այսմիկ. Եւ եթէ իցէ
անդ որդի ողջունի, հանգիցէ ի վերայ
նորա ողջոյնն ձեր. ապա թէ ոչ՝ ի ձեզ
7 դարձցի։ Եւ ի նմին տան ագանիջիք,
ուտիջիք եւ ըմպիջիք ի նոցանէ. զի
արժանի է մշակն վարձու իւրոյ. մի՛
8 փոխիցիք տանէ ի տուն։ Յոր քաղաք
մտանիցէք եւ ընդունիցին զձեզ, ու-
9 տիջիք զինչ առաջի դնիցեն ձեր. Եւ
բժշկեսջիք որ ի նմա հիւանդք իցեն,
եւ ասասջիք նոցա, Մերձեալ է ի վե-
10 րայ ձեր արքայութիւն Աստուծոյ։ Իսկ
յոր քաղաք մտանիցէք եւ ոչ ընդու-
նիցին զձեզ, իբրեւ ելանիցէք ի հրա-
11 պարակս նորա, ասասջիք, Եւ զփոշին
որ կպեալ է ի քաղաքէ ձերմէ յոտս
մեր՝ թօթափեսցուք ի ձեզ. բայց զայս
գիտասջիք զի մերձեալ է արքայու-
12 թիւն Աստուծոյ[1]։ Ասեմ ձեզ, զի Սո-
դոմացւոց ընդարձակագոյն լիցի յա-
ւուրն յայնմիկ քան քաղաքին այնմիկ։
13 Վա՜յ քեզ, Քորազին. վա՜յ քեզ, Բեթ-
սայիդա. զի եթէ ի Տիւրոս եւ ի Սի-
դոն եղեալ էին զօրութիւնքն որ ե-
ղեն ի ձեզ՝ վաղուց եւս արդեւք ի խորգ
եւ ի մոխիր նստեալ ապաշխարեալ էր։
14 Բայց Տիւրոսի եւ Սիդոնի ընդարձա-
կագոյն լիցի ի դատաստանի քան ձեզ։
15 Եւ դու, Կափառնայում, որ մինչեւ
յերկինս բարձրացեալ ես, մինչեւ ի
16 դժոխս իջցես։ Որ ձեզ լսէ՝ ինձ լսէ,
եւ որ զձեզ անարգէ՝ զիս անարգէ. եւ
որ զիս անարգէ՝ զառաքիչն իմ անար-
գէ. [2]եւ որ ինձ լսէ՝ լսէ այնմիկ որ
զիս առաքեաց։"
17 Դարձան [3]եւթանասուն եւ երկուքն"
խնդութեամբ եւ ասեն, Տէր, եւ դեւք

[1] Ոմանք ի Յոյն և ի Հայ օրինակաց յաւելուն, ի վե-
րայ ձեր
[2] Ի Յունական պակասէ
[3] Յունարէն, եւթանասունքն

18 հնազանդին մեզ յանուն քո։ Եւ ասէ
ցնոսա, Տեսանէի զՍատանայ անկեալ
19 յերկնից իբրեւ զփայլակն։ Ահա ետու
ձեզ իշխանութիւն կոխել զօձս եւ զկա-
րիճս եւ զամենայն զօրութիւն թշ-
նամւոյն, եւ ձեզ ոչինչ մեղանչիցեն։
20 Բայց ընդ այն մի՛ խնդայք եթէ այսք
հնազանդին ձեզ. այլ խնդացէք զի ան-
ուանք ձեր գրեալ են յերկինս։
21 Ի նմին ժամու ցնծացաւ Յիսուս
Հոգւովն [4]Սրբով եւ ասէ, Գոհանամ
զքէն, Հայր, Տէր երկնից եւ երկրի,
զի ծածկեցեր զայս յիմաստնոց եւ ի
գիտնոց, եւ յայտնեցեր զայս տղայոց.
այո, Հայր, զի այսպէս հաճոյ եղեւ
22 առաջի քո։ Ամենայն ինչ տուաւ ինձ
ի Հօրէ իմմէ. եւ ոչ ոք գիտէ թէ ով է
Որդի, եթէ ոչ՝ Հայր. եւ ո է Հայր,
եթէ ոչ՝ Որդի, եւ ում կամիցի Որդին
յայտնել։
23 Եւ դարձեալ առանձինն առ աշա-
կերտսն ասէ, Երանի աչաց որ տեսա-
24 նիցեն զոր տեսանէքդ։ Ասեմ ձեզ, զի
բազում մարգարէք եւ թագաւորք կա-
մեցան տեսանել զոր դուքդ տեսանէք,
եւ ոչ տեսին. եւ լսել զոր լսէքդ, եւ
ոչ լուան։
25 ԴԵ. Եւ ահա յարեաւ ոմն օրինա-
կան, փորձէր զնա եւ ասէր, Վարդա-
պետ, զի՞նչ գործեցից զի զկեանսն յա-
26 ւիտենականս ժառանգեցից։ Եւ նա
ասէ ցնա, Յօրէնս զի՞նչ գրեալ է, ո՞ր-
27 պէս ընթեռնուս։ Նա պատասխանի ետ
եւ ասէ, Սիրեսցես զՏէր Աստուած քո
յամենայն սրտէ քումմէ եւ յամենայն
անձնէ քումմէ եւ յամենայն զօրութենէ
քումմէ եւ յամենայն մտաց քոց, եւ
28 զընկեր քո իբրեւ զանձն քո։ Եւ ասէ
ցնա, Ուղիղ ետուր զպատասխանիդ,
29 զայդ արա եւ կեցցես։ Նա իբրեւ կա-
մեցաւ զանձն արդարացուցանել, ասէ
30 ցՅիսուս, Եւ ո՞վ է իմ ընկեր։ Պա-
տասխանի ետ Յիսուս եւ ասէ, Այր մի
իջանէր յԵրուսաղեմէ յԵրիքով, եւ
անկաւ ի ձեռս աւազակաց, որք մեր-
կացին զնա եւ վէրս ի վերայ եդին,
31 թողին կիսամահ եւ գնացին։ Դէպ ե-
ղեւ քահանայի միոջ իջանել ընդ նոյն
ճանապարհ, եւ տեսեալ զնա՝ զանց ա-
32 րար։ Նոյնպէս եւ Ղեւտացի մի եկեալ

[4] Ցոմանս պակասէ

ընդ նոյն տեղի՝ եկաւ եւ զանց ա-
33 րար: Սամարացի ոմն ճանապարհոր-
դեալ եկն ընդ նոյն առ նովաւ, եւ
34 տեսեալ զնա գթացաւ: Եւ մատուցեալ
պատեաց զվէրս նորա, արկեալ ի վե-
րայ ձէթ եւ գինի. եւ եդեալ ի վերայ
գրաստու իւրոյ՝ ած զնա ի պանդոկի
35 մի, եւ դարմանեաց զնա: Եւ ի վաղիւ-
անցը իբրեւ ելանէր անտի, հանեալ ետ
ցպանդոկապետն երկուս դահեկանս եւ
ասէ, Դարմա՛ն տար դմա, եւ զոր ինչ
ծախեսցես ի դա՝ ի միւսանգամ դարձա-
36 լեան իմում հատուցից քեզ: Արդ ո՞
յերեցունց ի նոցանէ թուի քեզ մերձա-
ւոր լեալ անկելոյն ի ձեռս աւազակացն:
37 Եւ նա ասէ, Որ արար զողորմութիւնն
ի վերայ նորա: Ասէ ցնա Յիսուս, Երթ
եւ դու արա նոյնպէս:
38 Եւ եղեւ ի գնալն նոցա, եւ ինքն
եմուտ ի գեղ մի. եւ կին ոմն անուն
Մարթա ընկալաւ զնա ի տան իւրում:
39 Եւ նորա էր քոյր մի, որում անուն էր
Մարիամ, որ եւ եկն նստաւ առ ոտն
40 Տեառն եւ լսէր զբանս նորա: Եւ Մար-
թա զբաղեալ էր ի բազում սպասու,
եկն եկաց առ նմա եւ ասէ, Տէր, ոչի՞նչ
է փոյթ քեզ, զի քոյրդ իմ միայն ե-
թող զիս ի սպասու. արդ ասա դմա
41 զի օգնեսցէ ինձ: Պատասխանի ետ Յի-
սուս եւ ասէ, Մարթա, Մարթա, դու
հոգաս եւ զբաղում իմիք զբաղեալ ես,
42 Բայց [1]աստ սակաւ" ինչ պիտոյ է.
Մարիամ մասն բարի ընտրեաց, որ ոչ
բարձցի ի նմանէ:

## ԳԼ. ԺԱ.

1 ԴՁ. Եւ եղեւ ի տեղւոջ ուրեք կայր
յաղօթս. եւ իբրեւ դադարեաց, ասէ
ցնա ոմն յաշակերտացն իւրոց, Տէր,
ուսո մեզ յաղօթս կալ, որպէս եւ Յով-
հաննէս ուսոյց աշակերտացն իւրոց:
2 Ասէ ցնոսա, Յորժամ կայցէք յաղօթս,
ասասջիք, Հայր [2]մեր, սուրբ եղիցի
անուն քո. եկեսցէ արքայութիւն [3]քո:
3 Զհաց մեր հանապազորդ տուր մեզ
4 [4]զօրըստօրէն: Եւ թող մեզ զմեղս մեր,
զի եւ մեք թողումք ամենայնի որ
պարտիցի մեզ. եւ մի՛ տանիր զմեզ
ի փորձութիւն[5]:
5 Եւ ասէ ցնոսա, Ո՞վ է ի ձէնջ որոյ իցէ
բարեկամ, եւ երթիցէ առ նա ի մէջ
գիշերի եւ ասիցէ ցնա, Բարեկամ,
6 տուր ինձ փոխ երիս նկանակս: Զի
բարեկամ իմ եկն առ իս յուղւոյ, եւ
7 ոչինչ ունիմ դնել առաջի նորա: Եւ
նա ի ներքուստ տայցէ պատասխանի
եւ ասիցէ, Մի՛ աշխատ առներ զիս,
զի դուռնդ փակեալ են, եւ մանկունքս
ընդ ինեւ կան յանկողնի, ոչ կարեմ
8 յառնել եւ տալ քեզ: Ասեմ ձեզ, Եթէ
ոչ յարուցեալ տայցէ նմա վասն բա-
րեկամութեանն, սակայն վասն ժտու-
թեանն յարուցեալ տայցէ նմա զինչ եւ
9 պիտոյ իցէ: Եւ ես ասեմ ձեզ, Խնդրե-
ցէք եւ տացի ձեզ, հայցեցէք եւ գտջիք,
10 բախեցէք եւ բացցի ձեզ: Զի ամենայն
որ խնդրէ՝ առնու, եւ որ հայցէ՝ գտանէ,
11 եւ որ բախէ՝ բացցի նմա: Ո՞ ոք ի
ձէնջ հայր՝ խնդրիցէ որդի իւր ձուկն,
միթէ փոխանակ ձկանն օ՞ձ տայցէ նմա:
12 Եւ կամ խնդրիցէ ձու, միթէ կարի՞ճ
13 տայցէ նմա: Իսկ եթէ դուք որ չարքդ
էք՝ գիտէք պարգեւս բարիս տալ որ-
դւոց ձերոց, ո՛րչափ եւս առաւել Հայր
ձեր յերկնից տացէ [6]բարիս այնոցիկ,
որ խնդրեն ի նմանէ:
14 ԴԵ. Եւ հանէր դեւ մի համր, եւ
եղեւ յելանել դիւին խօսեցաւ համրն,
եւ զարմացան ամենայն ժողովուրդքն:
15 Եւ ոմանք ի նոցանէ ասեն, Բէեղզե-
բուղաւ իշխանաւն դիւաց հանէ դա
16 զդեւս: Եւ այլք փորձէին եւ նշան
17 յերկնից խնդրէին ի նմանէ: Իսկ նո-
րա գիտացեալ զխորհուրդս նոցա, ասէ
ցնոսա, Ամենայն թագաւորութիւն
բաժանեալ յանձն՝ աւերի, եւ տուն
18 բաժանեալ յանձն՝ կործանի: Արդ եթէ
եւ Սատանայ բաժանեցաւ յանձնէ,
զիա՞րդ կայցէ թագաւորութիւն նորա.
զի ասէք զինէն եթէ Բէեղզեբուղաւ
իշխանաւն դիւաց հանէ դա զդեւս:
19 Եթէ ես Բէեղզեբուղաւ հանեմ զդեւս,
որդիքն ձեր իւ՞ հանիցեն. վասն այ-
դորիկ նոքին եղիցին ձեր դատաւորք:
20 Իսկ եթէ մատամբ Աստուծոյ հանեմ
զդեւս, ապա հասեալ է ի վերայ ձեր

[1] Բազում+, մի
[2] Ոմանք+, մեր որ յերկինս
[3] Ոմանք+, քո, եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի
[4] Յոյնն, օրըստօրէ
[5] Ոմանք+ յաւելուն, այլ փրկեա զմեզ ի չարէ
[6] Բազում+, Հոգի Սուրբ

21 արքայութիւն Աստուծոյ։ Յորժամ
հզօր վառեալ՝ պահիցէ զգաւիթ իւր, ի
22 խաղաղութեան են ինչք նորա։ Բայց
եթէ հզօրագոյն քան զնա ի վերայ եկ-
եալ յաղթեսցէ նմա, զսպառազինու-
թիւնն նորա հանէ յոր յուսացեալ էր,
23 եւ զաւար նորա բաշխեսցէ։ Որ ոչ է
ընդ իս՝ հակառակ իմ է, եւ որ ոչ ժո-
ղովէ ընդ իս՝ ցրուէ։
24 Յորժամ այսն պիղծ ելանիցէ ի մար-
դոյ, շրջի ընդ անջրդին տեղիս, խնդրէ
հանգիստ. եւ իբրեւ ոչ գտանէ, ասէ,
Դարձայց անդրէն ի տուն իմ ուստի
25 ելի. Եւ գայ գտանէ մաքրեալ եւ յար-
26 դարեալ։ Յայնժամ երթայ եւ առնու
եւթն այլ այս, չար եւս քան զինքն,
եւ մտանէ բնակէ անդ. եւ լինի յե-
տինն մարդոյն այնորիկ չար քան զա-
ռաջինն։
27 Եւ եղեւ մինչդեռ խօսէր զայս, ձայն
եբարձ կին մի ի ժողովրդենէ անտի
եւ ասէ, Երանի է որովայնին որ կր-
եացն զքեզ, եւ ստեանցն որ դիեցու-
28 ցին զքեզ։ Եւ նա ասէ, Նա երանի
այնոցիկ է, որ լսեն զբանն Աստուծոյ
եւ պահիցեն։
29 Եւ ի գիզանել ի վերայ նորա ժողո-
վրդոցն՝ սկսաւ ասել, Ազգս այս [1]ազգ
չար է, նշան խնդրէ, եւ նշան յերկ-
նից ոչ տացի սմա՝ բայց նշանն [2]Յովնա-
30 նու։ Զի որպէս եղեւ Յովնան նշան
Նինուէացւոց, նոյնպէս եղիցի եւ Որդի
31 մարդոյ ազգիս այսմիկ։ Դշխոյն հա-
րաւոյ յարիցէ ի դատաստանի ընդ արս
ազգիս այսորիկ եւ դատապարտեսցէ
զսա, զի եկն ի ծագաց երկրի լսել զի-
մաստութիւնն Սողոմոնի. եւ ահա
32 առաւել քան զՍողոմոն է աստ։ Արք
Նինուէացիք յարիցեն ի դատաստանի
ընդ ազգիս ընդ այսմիկ եւ դատապար-
տեսցեն զսա, զի ապաշխարեցին ի քա-
րոզութեանն Յովնանու. եւ ահա ա-
ռաւել քան զՅովնան է աստ։
33 ԵԿ. Ոչ ուրուք լուցեալ ճրագ դնէ
ի թաքստեան[3], այլ ի վերայ աշտանա-
կի, զի որ մտանեն՝ լոյս տեսանիցեն։
34 Ճրագ մարմնոյ ակն է. յորժամ ակնն
առատ է, ամենայն մարմինն լուսաւոր
եղիցի. եւ երբ ակն չար է, եւ մար-
35 մինն խաւարին եղիցի։ Արդ զգոյշ լեր,
զուցէ լոյսդ որ ի քեզ է՝ խաւար իցէ։
36 Եթէ մարմինդ քո ամենայն լուսաւոր
է եւ չգուցէ մասն ինչ խաւարին, ե-
ղիցի լուսաւոր ամենայն. որպէս յոր-
ժամ ճրագն նշողիւք լուսաւորեսցէ
զքեզ։
37 Եւ մինչդեռ խօսէր զայս, աղաչէր
զնա ոմն փարիսեցի զի ճաշ կերիցէ
առ նմա. եւ նա մտեալ բազմեցաւ։
38 Իբրեւ եսես փարիսեցին, զարմացաւ,
զի նախ ոչ մկրտեցաւ յառաջ քան
39 զճաշ։ Ասէ ցնա Տէր, Այժմ դուք, փա-
րիսեցիք, զարտաքինն բաժակին եւ
զպնակին սրբէք, եւ ներքինն ձեր լի է
յափշտակութեամբ եւ չարութեամբ։
40 Անմիտք, ո՞չ ապաքէն որ զարտաքինն
41 արար՝ եւ զներքինն նոյն արար։ Բայց
աղէ [4]զարժանն իսկ՝ տուք ողորմու-
թիւն, եւ ահա ամենայն սուրբ է ձեր։
42 Այլ վա՜յ ձեզ փարիսեցւոց, զի տասա-
նորդէք զանանուխ եւ զփեգենա եւ
զամենայն բանջար, եւ անցանէք զի-
րաւամբք եւ զսիրովն Աստուծոյ. զայս
արժան էր առնել եւ զայնու ոչ ան-
43 ցանել։ Վա՜յ ձեզ փարիսեցւոց, զի սի-
րէք զբարձրագահս ի ժողովուրդս եւ
44 [5]զնախողջոյնս ի հրապարակս։ Վա՜յ
[6]ձեզ, զի էք դուք իբրեւ զգերեզմանս
անյայտս, եւ մարդիկ գնան ի վերայ
45 եւ ոչ գիտեն։ Պատասխանի ետ ոմն
յօրինականացն եւ ասէ ցնա, Վարդա-
պետ, զայդ բանս ասելով եւ զմեզ
46 թշնամանես։ Եւ նա ասէ, Եւ ձեզ վա՜յ
օրինականացդ, զի բառնայք մարդկան
բեռինս զժուարակիրս, եւ դուք մա-
տամբ միով ի բեռինսն ոչ մերձենայք։
47 Վա՜յ ձեզ, զի շինէք զշիրիմս մարգա-
րէիցն, եւ հարքն ձեր սպանին զնոսա։
48 Ապա ուրեմն [7]վկայէք եթէ կամակիցք
էք՝ գործոց հարցն ձերոց. զի նոքա
կոտորեցին զնոսա, եւ դուք զգերեզ-
49 մանս նոցա շինէք։ Վասն այնորիկ ի-
մաստութիւնն Աստուծոյ ասաց, Ա-
ռաքեցից ի նոսա մարգարէս եւ առա-
քեալս, եւ ի նոցանէ սպանանիցեն եւ
50 հալածիցեն։ Զի խնդրեսցի արիւն ա-

[1] Յոմանս պակասէ
[2] Ոմանք, Յովնանու մարգարէի, որպէս և ոմանք ի Հայերէն օրինակաց
[3] Բազումք յաւելուն, և ոչ ընդ գրուանաւ
[4] Յոյնն, զորս ի ներքս են՝ տուք, զոր ունիքն՝
[5] Յոյնն, զողջոյնս
[6] Ոմանք, ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց
[7] Ոմանք, վկայ էք և կամակիցք

մենայն մարգարէից հեղեալ ի սկզբանէ
51 աշխարհի՝ յազգէս յայսմանէ, Յարե-
նէն Աբելի մինչեւ ցարիւնն Զաքարեայ
կորուսելոյ ընդ սեղանն եւ ընդ տա-
ճարն. այո, ասեմ ձեզ, խնդրեսցի
52 յազգէս յայսմանէ։ Վա՜յ ձեզ օրինա-
կանացդ, զի թաքուցանէք զփականս
գիտութեանն. դուք ոչ մտանէք, եւ
որ մտանելոցն են՝ արգելուք։
53 [1]Եւ ի խօսելն զայս ամենայն առ նո-
սա˝ առաջի ամենայն ժողովրդեանն, զա-
մօթի հարկանէին. եւ սկսան դպիրքն
եւ փարիսեցիք դժարել եւ դրդել ընդ
54 նմա վասն բազում իրաց. Եւ սպասել
որսալ ինչ բանս ի բերանոյ նորա, [2]զի
չարախօսեսցեն զնմանէ։˝

Գլ. ԺԲ

1 Որովք ի կուտել բիւրաւորաց ժողո-
վրդեանն մինչեւ կոխել զմիմեանս,
սկսաւ ասել ցաշակերտսն իւր. Նախ
զգոյշ լերուք անձանց ի խմորոյ փա-
րիսեցւոցն, որ է կեղծաւորութիւն։
2 Զի ոչինչ է ի ծածուկ որ ոչ յայտնեսցի,
3 եւ գաղտնի՝ որ ոչ ծանիցի։ Վասն զի
զոր ինչ ասիցէք ի խաւարի՝ լուիցի
ի լոյս. եւ զոր յունկանէն խօսեցա-
րուք ի շտեմարանս՝ քարոզեսցի ի վերայ
4 տանեաց։ Բայց ձեզ ասեմ սիրելեաց
իմոց, Մի՛ զարհուրիցիք յայնցանէ որ
սպանանեն զմարմին, եւ յետ այնորիկ
5 աւելի ինչ ոչ ունիցին առնել. Այլ
ցուցից ձեզ յումմէ երկնչիցիք. երկնչի-
ջիք յայնմանէ որ յետ սպանանելոյ ունի
իշխանութիւն արկանել ի գեհեն. այո,
6 ասեմ ձեզ, յայնմանէ երկնչիջիք։ Ո՞չ
ապաքէն հինգ [3]ձագ երկուց դանգաց
վաճառի, եւ մի ի նոցանէ ոչ է մոռա-
7 ցեալ առաջի Աստուծոյ։ Այլ ձեր եւ
ամենայն խիլ հեր գլխոյ թուեալ է.
մի՛ երկնչիք, զի քան զբազում ճագս
8 լաւ էք դուք։ Ասեմ ձեզ զի Ամենայն
որ խոստովանեսցի յիս առաջի մարդ-
կան, եւ Որդի մարդոյ խոստովանեսցի
զնմանէ առաջի հրեշտակաց Աստուծոյ։
9 Եւ որ ուրասցի զիս առաջի մարդկան՝
ուրացեալ լիցի առաջի հրեշտակաց Աս-
10 տուծոյ։ Եւ ամենայն որ ասէ բան
զՈրդւոյ մարդոյ՝ թողցի նմա. բայց որ
զՀոգին Սուրբ հայհոյեսցէ՝ մի՛ թողցի
11 նմա։ Այլ յորժամ տանիցին զձեզ ի
ժողովուրդս եւ ի պետութիւնս եւ յիշ-
խանութիւնս, մի՛ հոգայցէք որպէս
[4]թէ զի՛նչ պատասխանի տայցէք կամ
12 զի՛նչ ասիցէք։ Զի Հոգին Սուրբ ու-
սուսցէ ձեզ ի նմին ժամու զինչ պարտ
իցէ խօսել։
13 ԵԲ. Ասէ ոմն ի ժողովրդենէն ցնա,
Վարդապետ, ասա ցեղբայր իմ բաժա-
14 նել ընդ իս զժառանգութիւնն։ Եւ նա
ասէ ցնա, Այր դու, ո՞ կացոյց զիս
դատաւոր կամ բաժանարար ի վերայ
15 ձեր։ Եւ ասէ ցնոսա, Տեսէք եւ զգոյշ
լերուք [5]յամենայն ագահութենէ˝, զի
ոչ եթէ ի մթերից ընչից ուրուք իցեն
16 կեանք նորա։ Խօսեցաւ առ նոսա ա-
ռակ մի եւ ասէ, Առն ուրումն մեծա-
17 տան եւտուն անդք առհմակս. Եւ
խորհէր ի միտս իւր եւ ասէր, Զի՞
գործեցից, զի ոչ գոյ տեղի ուր ժողո-
18 վեցից զարդիւնս իմ։ Եւ ասէ, [6]Զիտեմ
զինչ˝ արարից. քակեցից զշտեմարանս
իմ, եւ եւս մեծամեծս շինեցից, եւ
անդր ժողովեցից զցորեան եւ զամե-
19 նայն բարութիւնս իմ։ Եւ ասացից
ցանձն իմ, Անձն, ունիս բազում բա-
րութիւնս համբարեալ ամաց բազմաց.
հանգիր, կեր, արբ եւ ուրախ լեր։
20 Ասէ ցնա Աստուած, Անմիտ, յայսմ
գիշերի զոգիդ ի քէն ի բաց պահանջի-
ցեն, իսկ զոր պատրաստեցերն ո՞ւմ
21 լինիցի։ Նոյնպէս եւ որ գանձէ անձին,
եւ ոչ յԱստուած մեծանայցէ։
22 Ասէ ցաշակերտսն իւր, Վասն այ-
դորիկ ասեմ ձեզ, Մի՛ հոգայք ընդ
ոգւոյ թէ զի՛նչ ուտիցէք, եւ մի՛ ընդ
23 մարմնոյ թէ զի՛նչ զգենուցուք։ Զի
ոգի առաւել է քան զկերակուր, եւ
24 մարմին՝ քան զհանդերձ։ Հայեցարուք
ընդ ագռաւս, զի ոչ սերմանեն եւ ոչ
հնձեն, որոց ոչ գոն շտեմարանք եւ
ոչ համբարանոցք, եւ Աստուած կե-
րակրէ զնոսա. ո՛րչափ եւս առաւել
25 զձեզ որ լաւ էք քան զթռչունս։ Ո՞վ
ի ձէնջ առ հոգալ կարիցէ յաւելուլ ի
26 հասակ իւր կանգուն մի։ Իսկ արդ
եթէ ի փոքուն չէք բաւական, վասն

[1]Ոմանք, Յելանել նորա արտաքս
[2]Յոմանս պակասէ [3]Ճնճղուկ. տես Մատթ. Ժ. 29։
[4]Յոմանս, կամ
[5]Ոմանք, յագահութենէ [6]Յոմանս, Զայս

27 այլոցն զի՞ հոգայցէք։ Հայեցարո՛ւք ընդ
շուշանն, ո՛րպէս աճէ․ ոչ ջանայ եւ
ոչ նիւթէ․ ասեմ ձեզ, Եւ ոչ Սողո-
մոնն յամենայն ի փառսն իւր զգեցաւ
28 իբրեւ զմի ի նոցանէ։ Իսկ եթէ զխոտն
որ այսօր ի բացի է եւ վաղիւ ի հնոց
արկանելի՝ Աստուած այնպէս զգեցու-
ցանէ, ո՛րչափ եւս առաւել զձեզ, թե-
29 րահաւատք։ Եւ դուք մի՛ խնդրէք
զի՛նչ ուտիցէք կամ զի՛նչ ըմպիցէք,
30 եւ մի՛ զբաղնուք․ Զի զայն ամենայն
հեթանոսք աշխարհի խնդրեն․ այլ ձեր
Հայր գիտէ զի պիտոյ է այն ամենայն։
31 Բայց խնդրեցէք զարքայութիւն Աս-
տուծոյ, եւ [1]այն յաւելցի ձեզ։
32 ԵԳ․ Մի՛ երկնչիր, հօտ փոքրիկ,
զի հաճեցաւ Հայր ձեր տալ ձեզ զար-
33 քայութիւն։ Վաճառեցէք զինչս ձեր
եւ տուք ողորմութիւն․ եւ արարէք
ձեզ քսակս առանց հնանալոյ, գանձ
անպակաս յերկինս․ ուր ոչ գող մեր-
34 ձենայ եւ ոչ ցեց ապականէ։ Զի ուր
գանձն ձեր է, անդ եւ սիրտք ձեր ե-
35 ղիցին։ Եղիցին գօտիք ձեր պնդեալ
36 ընդ մէջս, եւ ճրագունք լուցեալք։ Եւ
դուք նմանողք մարդկան որ ակն ու-
նիցին տեառն իւրեանց թէ երբ դառ-
նայցէ ի հարսանեաց․ զի յորժամ գայցէ
եւ բախիցէ, վաղվաղակի բանայցեն
37 նմա։ Երանի իցէ ծառայիցն այնոցիկ
զորս եկեալ տէրն գտցէ արթունս․
ամէն ասեմ ձեզ, զի գօտի ընդ մէջ
ածցէ եւ բազմեցուսցէ զնոսա, եւ ան-
38 ցեալ պաշտիցէ զնոսա։ Եւ եթէ յերկ-
րորդ կամ յերրորդ պահու եկեսցէ եւ
գտցէ այնպէս, երանելի են ծառայքն
39 այնոքիկ։ Բայց զայն գիտասջիք, եթէ
գիտէր տանուտէրն յորում ժամու գող
գայ, [2]չտայր թոյլ ակածն հատանել ի
40 տան իւրում։ Եւ դուք եղերուք պատ-
րաստք, զի յորում ժամու ոչ կարծի-
ցէք, գայ Որդի մարդոյ։
41 [3]Ասէ Պետրոս, Տէր, առ մե՞զ ասա-
ցեր զառակդ զայդ թէ առ ամենեսեան։
42 Եւ ասէ Տէր, Ո՞վ իցէ հաւատարիմ
տնտես եւ իմաստուն, զոր կացոյց տէր
իւր ի վերայ գերդաստանի իւրոյ տալ
43 ի ժամու զկերակուրս։ Երանի իցէ
ծառային այնմիկ զոր եկեալ տէր իւր
44 գտանիցէ արարեալ այնպէս։ Արդարեւ
ասեմ ձեզ զի ի վերայ ամենայն ընչից
45 իւրոց կացուսցէ զնա։ Ապա թէ ասի-
ցէ ծառայն այն ի սրտի իւրում, Յամէ
տէր իմ ի գալ․ եւ սկսանիցի հարկա-
նել զծառայսն եւ զաղախնայսն, ուտե՛լ
46 եւ ըմպել եւ արբենալ, Եկեսցէ տէր
ծառային այնորիկ յաւուր յորում ակն
ոչ ունիցի, եւ ի ժամու յորում ոչ գի-
տիցէ․ ընդ մէջ կտրեսցէ զնա, եւ
զբաժին նորա ընդ անհաւատս դիցէ։
47 Եւ ծառայ որ գիտիցէ զկամս տեառն
իւրոյ եւ [4]ոչ պատրաստիցէ՝՝ ըստ կա-
48 մաց նորա՝ արբցէ գան բազում։ Եւ
որ ոչն գիտիցէ եւ արժանի գանի ինչ
գործիցէ, արբցէ գան սակաւ․ ամե-
նայնի որում շատ տուաւ, շատ խնդ-
րեսցի ի նմանէ, եւ որում բազում ա-
ւանդեցաւ, առաւել եւս պահանջես-
ցեն ի նմանէ։
49 ԵԴ․ Հուր եկի արկանել յերկիր․
եւ զի՞նչ կամիմ, թէ արդէն իսկ բոր-
50 բոքէր։ Եւ մկրտութիւն մի ունիմ
մկրտել, եւ զիա՛րդ փութամ մինչեւ
51 կատարեսցի։ Համարիք եթէ խաղա-
ղութի՞ւն եկի տալ յերկիր․ ոչ, ասեմ
52 ձեզ, այլ բաժանումն։ Զի եղիցին յայսմ
հետէ հինգ ի տան միում բաժանեալք,
երեքն՝ յերկուց, եւ երկուքն՝ յերից։
53 Բաժանեսցի հայր յորդւոյ, եւ որդի՝
ի հօրէ, մայր՝ ի դստերէ եւ դուստր՝
ի մօրէ, սկեսուր՝ ի հարսնէ, եւ հարսն՝
ի սկեսրէ իւրմէ։
54 Ասաց եւ ցժողովուրդսն, Յորժամ
տեսանիցէք ամպ ծագեալ յարեւմտից,
իսկոյն ասէք թէ Անձրեւ գայ, եւ լինի
55 այնպէս․ Եւ յորժամ հարաւ շնչեալ,
ասէք թէ Խորշակ լինի, եւ լինի այն-
56 պէս։ Կեղծաւորք, զերեսս երկնի եւ
երկրի գիտէք փորձել, իսկ զժամա-
57 նակս զայս զիա՞րդ ոչ փորձէք։ Ընդէ՞ր
եւ յանձանց իսկ ոչ ընտրէք զարդարն։
58 Յորժամ երթայցես ընդ ոսոխի քում
առ իշխան, ի ճանապարհի տուր զհա-
ջիւն զերծանել ի նմանէ․ զի գուցէ
քարշիցէ զքեզ առ դատաւորն, եւ դա-
տաւորն մատնիցէ զահճի, եւ դահիճն
59 արկանիցէ ի բանտ։ Ասեմ քեզ, ոչ ե-
լանիցես անտի մինչեւ հատուցանիցես
զյետին բնիոնն։

---

[1] Ոմն․, այն ամենայն
[2] Բազում․, հսկէր և չտայր [3] Ոմն․, Ասէ ցնա

[4] Բազում․, չիցէ պատրաստեալ և ոչ արարեալ

## Գլ. ԺԳ

1 Եկին ոմանք ի նմին ժամանակի եւ
պատմեցին նմա վասն Գալիլեացւոցն,
որոց զարիւնն Պիղատոս խառնեաց ընդ
2 զոհս նոցա։ Պատասխանի ետ եւ ասէ
ցնոսա, Համարի՞ք եթէ այն Գալիլեա-
ցիք եղեն մեղաւորք քան զամենայն
Գալիլեացիս, զի զայնպիսի անցս կրե-
3 ցին։ Ոչ, ասեմ ձեզ. այլ եթէ ոչ ա-
պաշխարիցէք, ամենեքին նոյնպէս կո-
4 րնչիջիք։ Կամ նոքա ութուտասանքն
յորոց վերայ աշտարակն անկաւ ի Սե-
լովամ եւ սպան զնոսա, համարի՞ք
եթէ նոքա պարտապանք եղեն քան
զամենայն մարդիկ որ բնակեալ են յե-
5 րուսաղէմ։ Ոչ, ասեմ ձեզ. այլ եթէ
ոչ ապաշխարիցէք, ամենեքեան նոյն-
պէս կորնչիջիք։
6 Ասաց եւ զառակս զայս. Թզենի մի
էր ուրումն տնկեալ յայգւոջ իւրում,
եւ եկն խնդրել պտուղ ի նմանէ եւ ոչ
7 եգիտ։ Ասէ ցայգեգործն, Ահա երեք
ամք են յորմէ հետէ գամ խնդրել պտուղ
ի թզենւոջդ եւ ոչ գտանեմ. արդ կրտ-
րեա զդա, ընդէ՞ր եւ զերկիրդ խա-
8 փանէ։ Նա պատասխանի ետ եւ ասէ,
Տէր, թող զդա այս ամ եւս, մինչեւ
շուրջ զդովաւ բրեցից եւ արկից աղբ,
9 թերեւս արասցէ պտուղ. ապա թէ ոչ՝
յամէ եւս հատցես զդա։
10 ԾԵ. Եւ ուսուցանէր ի միում ի ժո-
11 ղովրդանոցացն ի շաբաթու։ Եւ ահա
կին մի զոր ունէր այս հիւանդութեան
ամս ութուտասն, եւ էր կորկամեալ,
եւ ոչ կարէր ամենեւին ի վեր հայել։
12 Եւ տեսեալ զնա Յիսուսի՝ կոչեաց առ
ինքն եւ ասէ ցնա, Կին դու, արձա-
13 կեալ ես ի հիւանդութենէ քումմէ։ Եւ
եդ ի վերայ նորա ձեռն, եւ առժամայն
ուղղեցաւ եւ փառաւոր առնէր զԱս-
14 տուած։ Պատասխանի ետ ժողովրդա-
պետն ցասուցեալ թէ ընդէր ի շաբա-
թու բժշկեաց Յիսուս, եւ ասէ ցժո-
ղովուրդն, Վեց օր է յորս արժան է
գործել, յայնս եկայք բժշկեցարուք,
15 եւ մի՛ յաւուր շաբաթու։ Պատասխա-
նի ետ նմա Տէր եւ ասէ, Կեղծա-
ւորք, իւրաքանչիւր ոք ի ձէնջ ի շա-
բաթու ո՞չ արձակէ զեզն իւր կամ զէշ
16 ի մսրոյ եւ տանի տայ ջուր։ Իսկ այս՝
զուստր Աբրահամու էր, զոր կապեաց
Սատանայ ահաւասիկ ութուտասն ամ,
ո՞չ էր արժան արձակել ի կապանաց
17 անտի ի շաբաթու։ Եւ զայս իբրեւ
ասաց, յամօթ լինէին ամենեքին որ
հակառակն կային նմա. եւ ամենայն
ժողովուրդն ուրախ լինէր ի վերայ ա-
մենայն փառաւորութեանցն որ գոր-
ծէին ի նմանէ։
18 Եւ ասէր, Ո՞ւմ նման է արքայու-
թիւն Աստուծոյ, եւ ո՞ւմ նմանու-
19 թեան նմանեցուցից զնա։ Նման է հա-
տոյ մանանխոյ, զոր առեալ մարդոյ
արկ ի պարտէզ իւր. աճեաց եւ եղեւ
[1]ծառ, եւ թռչունք երկնից բնակեալ
էին յոստս նորա։
20 Եւ դարձեալ ասէ, Ո՞ւմ նմանեցու-
21 ցից զարքայութիւն Աստուծոյ։ Նման
է խմորոյ զոր առեալ կնոջ թաքոյց
յալեր երից գրուից, մինչեւ խմորե-
ցաւ ամենայն։
22 ԾԶ. Եւ շրջէր ընդ քաղաքս եւ ընդ
գեօղս, ուսուցանէր. եւ ճանապարհ
23 արարեալ յԵրուսաղէմ, Ասէ ոմն ցնա,
Տէր, եթէ սակա՞ւք իցեն որ ապրելոց
24 իցեն. եւ նա ասէ ցնոսա, Ջանացա-
րուք մտանել ընդ դուռն նեղ. ասեմ
ձեզ զի բազումք խնդրեսցեն մտանել
25 եւ ոչ կարասցեն։ Յորմէ հետէ մտցէ
տանուտէրն եւ փակեսցէ զդուռնն, եւ
սկսանիցիք կալ արտաքոյ եւ բախել
զդուռնն եւ ասել, Տէր, Տէր, բաց
մեզ. եւ պատասխանի տուեալ ասիցէ
26 ձեզ, Ոչ գիտեմ զձեզ ուստի էք։ Յայն-
ժամ սկսանիջիք ասել, Կերաք առաջի
քո եւ արբաք, եւ ի հրապարակս մեր
27 ուսուցեր։ Եւ ասիցէ, Ասեմ ձեզ, Ոչ
գիտեմ զձեզ ուստի էք. ի բաց կացէք
յինէն ամենայն մշակք անիրաւու-
28 թեան։ Անդ եղիցի լալ եւ կրճել ա-
տամանց, յորժամ տեսանիցէք զԱբրա-
համ եւ զԻսահակ եւ զՅակոբ եւ զա-
մենայն մարգարէս յարքայութեան Աս-
տուծոյ, եւ զձեզ հանեալ արտաքս։
29 Եւ եկեսցեն յարեւելից եւ յարեւմտից
եւ ի հիւսիսոյ եւ ի հարաւոյ, եւ բազ-
30 մեսցին յարքայութեան Աստուծոյ։ Եւ
ահա իցեն յետինք՝ որ եղիցին առա-
ջինք, եւ իցեն առաջինք՝ որ լինիցին
յետինք։

---

[1] Ոմն., ծառ մեծ

31 Ի նմին աւուր մատեան ոմանք փա-
րիսեցիք եւ ասեն ցնա, Ել եւ գնա
աստի, զի Հերովդէս կամի սպանանել
32 զքեզ։ Եւ ասէ ցնոսա, Երթայք ասա-
ցէք աղուեսուդ այդմիկ, Ահաւասիկ
հանեմ դեւս, եւ բժշկութիւնս կա-
տարեմ այսօր եւ վաղիւ, եւ յերիր
33 աւուր կատարիմ։ Բայց պարտ է այսօր
եւ վաղիւ եւ ի միւսում աւուր գնալ.
զի ոչ է մարթ մարգարէի կորնչել ար-
34 տաքոյ քան զԵրուսաղէմ։ Երուսաղէ՛մ,
Երուսաղէ՛մ, որ կոտորէիր զմարգա-
րէս եւ քարկոծ առնէիր զառաքեալսն
առ քեզ, քանի՛ցս անգամ կամեցայ
ժողովել զորդիս քո, որպէս հաւ զձագս
իւր ընդ թեւովք, եւ ոչ կամեցարուք։
35 Ահա թողեալ լիցի ձեզ տունդ [1]ձեր.
բայց ասեմ ձեզ, եթէ Ոչ եւս տեսանի-
ցէք զիս, մինչեւ ասիցէք, Օրհնեալ
եկեալն յանուն Տեառն։

## ԳԼ. ԺԴ

1 ԵԿ. Եւ եղեւ ի մտանելն նորա ի տուն
ումեմն իշխանացն փարիսեցւոց ի շա-
բաթու ուտել հաց, եւ նոքա սպասէին
2 նմա։ Եւ ահա այր մի էր անդ ջրգող-
3 եալ առաջի նորա։ Պատասխանի ետ
Յիսուս եւ ասէ ցօրինականսն եւ ցփա-
րիսեցիս, եթէ Արժա՞ն իցէ ի շաբաթու
4 բժշկել։ Եւ նոքա լուռ եղեն. եւ բուռն
հարեալ զնմանէ՝ բժշկեաց զնա եւ ար-
5 ձակեաց։ Եւ ասէ ցնոսա, Ո՞յր ուրուք
ի ձէնջ էշ կամ եզն անկանիցի ի ջրհոր,
եւ ոչ վաղվաղակի հանիցէ զնա յաւուր
6 շաբաթու։ Եւ ոչ կարացին տալ նմա
պատասխանի առ այն։
7 Ասաց եւ առ կոչնականսն առակ մի,
հայեցեալ թէ զիա՛րդ բարձրնախիլ լի-
8 նէին, ասէ ցնոսա, Յորժամ կոչիցէ
ոք զքեզ ի հարսանիս [2]կամ ի կոչունս՝,
մի՛ բազմիցիս յառաջին բարձին. գուցէ
պատուականագոյն եւս քան զքեզ իցէ
9 կոչեցեալ ի նմանէ. Եւ եկեալ որ զքեզն
եւ զնա կոչեաց՝ ասիցէ ցքեզ, Տուր
սմա տեղի. եւ ապա սկսանիցիս ա-
10 մօթով զյետին տեղին ունել։ Այլ յոր-
ժամ կոչիցիս, երթիջիր բազմեսջիր ի
յետին տեղւոջ, զի յորժամ գայցէ որ
կոչեացն զքեզ, ասիցէ ցքեզ, Բարեկամ,
ի վեր մատիր. յայնժամ եղիցին քեզ
11 փառք առաջի բարձակցացն քոց։ Զի
ամենայն որ բարձրացուցանէ զանձն՝
խոնարհեսցի. եւ որ խոնարհեցուցանէ
զանձն՝ բարձրասցի։
12 Ասէ եւ ցկոչնատէրն, Յորժամ առ-
նիցես ճաշ կամ ընթրիս, մի՛ կոչեր
զբարեկամս քո, եւ մի՛ զեղբարս քո,
եւ մի՛ զազգականս քո, եւ մի՛ [3]զդրա-
ցիս քո եւ մի՛ զմեծամեծս՝. զի մի՛ եւ
նոքա փոխարէն կոչեսցեն զքեզ, եւ լի-
13 նիցի քեզ հատուցումն։ Այլ յորժամ առ-
նիցես ընդունելութիւն, կոչեա զաղ-
քատս եւ զխեղս, զկաղս եւ զկոյրս.
14 Եւ երանելի լինիցիս. զի ոչ ունին
փոխարէն հատուցանելոյ քեզ, եւ հա-
տուսցի քեզ փոխարէն ի յարութեան
15 արդարոց։ Իբրեւ լուաւ զայս ոմն ի
բազմականացն, ասէ ցնա, Երանի որ
կերիցէ ճաշ յարքայութեան Աստուծոյ։
16 Եւ նա ասէ ցնա, Այր ոմն գործեաց
17 [4]ընթրիս եւ հրաւիրեաց զբազումս։ Եւ
առաքեաց զծառայ իւր ի ժամու ընթ-
րեացն կոչել զհրաւիրեալսն թէ Եկայք,
զի ահաւասիկ պատրաստ է ամենայն
18 ինչ։ Եւ սկսան մի ըստ միոջէ ամե-
նեքեան հրաժարել. առաջինն ասէ, Ա-
գարակ գնեցի, եւ հարկ է ելանել տե-
սանել զնա. աղաչեմ զքեզ, կալ զիս
19 հրաժարեալ։ Եւ միւսն ասէ, Լուծս
հինգ եզանց գնեցի եւ երթամ փորձել
զնոսա. աղաչեմ զքեզ, կալ զիս հրա-
20 ժարեալ։ Եւ միւսն ասէ, Կին առի, եւ
21 վասն այնորիկ ոչ կարեմ գալ։ Եւ եկեալ
ծառայն պատմեաց զայն տեառն իւրում.
յայնժամ բարկացեալ տանուտէրն՝ ասէ
ցծառայն իւր, Ել վաղվաղակի ի հրա-
պարակս եւ ի փողոցս քաղաքիդ, եւ
զաղքատս եւ զխեղս եւ զկաղս եւ
22 զկոյրս մուծ այսր։ Եւ ասէ ծառայն,
Տէր, եղեւ զոր հրամայեցերն եւ կայ
23 եւս տեղի։ Եւ ասէ տէրն ցծառայն,
Ել ի ճանապարհս եւ ի ցանկս, եւ արա
24 այսր մտանել, զի լցցի տուն իմ։ Ա-
սեմ ձեզ, զի Ոչ ոք յայնց կոչեցելոց
ճաշակեսցէ յընթրեաց իմոց։
25 ԶԿ. Եւ երթային ընդ նմա ժողո-
վուրդք բազումք. դարձաւ եւ ասէ
26 ցնոսա, Եթէ ոք գայ առ իս, եւ ոչ

[1] Ոմանք, ձեր աւերակ
[2] Ի Յոյնն պակաս
[3] Յոյնն, զդրացիս քո մեծատունս
[4] Յոյնն, ընթրիս մեծ

ատեայ զհայր իւր եւ զմայր եւ զկին
եւ զորդիս եւ զեղբարս եւ զքորս, նա՛
եւ զանձն եւս իւր, ոչ կարէ իմ աշա-
27 կերտ լինել։ Զի որ ոչ բառնայ զխաչ
իւր եւ գայ զկնի իմ՝ ոչ կարէ իմ ա-
28 շակերտ լինել։ Ո՞վ ոք ի ձէնջ կամիցի
շինել աշտարակ, եւ ոչ նախ նստեալ
համարիցի զծախսն, եթէ ունիցի՛ բա-
29 ւական ի կատարումն. Զի գուցէ իբրեւ
արկանիցէ հիմն եւ ոչ կարիցէ կատա-
րել, ամենեքին որ տեսանիցեն, սկսա-
30 նիցին ծաղր առնել զնա, Եւ ասել թէ
Այս այր սկսաւ շինել, եւ ոչ կարաց
31 կատարել։ Կամ ո՞ր թագաւոր երթեալ
տայցէ պատերազմ ընդ այլում թագա-
ւորի, եւ ոչ նստեալ նախ խորհիցի,
եթէ կարո՞ղ իցէ տասն հազարաւ զդէմ
ունել զայնորիկ որ գայցէ ի վերայ նո-
32 րա քսան հազարաւ։ Ապա թէ ոչ,
մինչդեռ հեռագոյն իցէ, հրեշտակու-
թիւն առաքեալ աղաչեսցէ ի խաղա-
33 ղութիւն։ Արդ այսպէս ամենայն ոք
ի ձէնջ որ ոչ հրաժարեսցէ յամենայն
ընչից իւրոց, ոչ կարէ իմ աշակերտ
34 լինել։ Բարւոք է աղ. ապա թէ աղն
35 անհամեսցի, ի՞ւ համեմեսցի։ Ոչ յերկիր
եւ ոչ յաղբ է պիտանացու, այլ ընկե-
նուլ զնա արտաքս։ Որ ունիցի ականջս
լսելոյ՝ լուիցէ։

ԳԼ. ԺԵ

1 Եւ էին մերձ առ նա ամենայն մաք-
սաւորք եւ մեղաւորք լսել ի նմանէ։
2 Տրտնջէին փարիսեցիքն եւ դպիրք եւ
ասէին, Ընդէ՞ր սա զմեղաւորս ընդու-
նի եւ ուտէ ընդ նոսա։
3 Ասաց առ նոսա զառակս զայս.
4 Ո՞վ ոք իցէ ի ձէնջ մարդ որոյ իցէ
հարեւր ոչխար, եւ կորուսանիցէ զմի
ի նոցանէ, ո՞չ թողուցու զիննսուն եւ
զինն յանապատի, եւ երթայցէ զհետ
կորուսելոյն, մինչեւ գտանիցէ զնա։
5 Եւ իբրեւ գտանէ, դնէ զնա ի վերայ
6 ուսոց իւրոց խնդալով, Եւ երթայ ի
տուն, կոչէ զբարեկամս եւ զդրացիս,
եւ ասէ ցնոսա, Ուրախ եղերուք ընդ
իս, զի գտի զոչխարս իմ զկորուսեալ։
7 Ասեմ ձեզ, զի Այսպէս է ուրախու-
թիւն յերկինս վասն միոյ մեղաւորի
որ ապաշխարիցէ՝ քան վասն իննսուն
եւ ինն արդարոց որոց չիցէ պիտոյ ա-
8 պաշխարութիւն։ Կամ ո՞վ իցէ կին,
որոյ իցէն դրամք տասն. եւ եթէ կո-
րուսանիցէ դրամ մի, ո՞չ լուցանիցէ
ճրագ եւ ածիցէ աւել ի տան, եւ խնդ-
9 րիցէ ստէպ, մինչեւ գտանիցէ։ Եւ
իբրեւ գտանէ, կոչէ զբարեկամս եւ
զդրացիս եւ ասէ, Ուրախ լերուք ընդ
իս, զի գտի զդրամն իմ զոր կորուսի։
10 Այնպէս, ասեմ ձեզ, ուրախութիւն
եղիցի առաջի հրեշտակաց Աստուծոյ
ի վերայ միոյ մեղաւորի որ ապաշխա-
րիցէ։
11 Եւ ասէ, Առն միոջ էին երկու որ-
12 դիք. Ասէ կրտսերն ի նոցանէ ցհայրն,
Հայր, տուր ինձ բաժին, որ անկա-
նի յընչիցդ. եւ նա բաժանեաց նոցա
13 զկեանսն։ Եւ յետ ոչ բազում աւուրց
ժողովեալ զամենայն կրտսեր որդւոյն՝
գնաց յաշխարհ հեռի. եւ անդ վատ-
նեաց զինչս իւր, զի կեայր անառա-
14 կութեամբ։ Եւ իբրեւ սպառեաց զա-
մենայն, եղեւ սով սաստիկ յաշխարհին
յայնմիկ, եւ սկսաւ ինքն չքաւորել։
15 Եւ գնացեալ յարեցաւ ի մի ոմն ի քա-
ղաքացւոց աշխարհին այնորիկ. եւ
յղեաց զնա յագարակ իւր արածել խոզս։
16 Եւ ցանկայր լնուլ զորովայն իւր յեղ-
ջերէն զոր խոզքն ուտէին, եւ ոչ ոք
17 տայր նմա։ Եւ եկեալ ի միտս իւր՝ ասէ,
Քանի՜ վարձկանք իցեն ի տան հօր իմոյ
հացալիցք, եւ ես աստ սովամահ կո-
18 րնչիմ։ Յարուցեալ գնացից առ հայր
իմ եւ ասացից ցնա, Հայր, մեղայ յեր-
19 կինս եւ առաջի քո, Եւ ոչ եւս եմ
արժանի կոչել որդի քո, արա զիս իբ-
20 րեւ զմի ի վարձկանաց քոց։ Եւ յա-
րուցեալ եկն առ հայր իւր. եւ մինչ-
դեռ հեռագոյն էր, ետես զնա հայրն
եւ գթացաւ. յարեաւ եւ ընթացաւ
ընդ առաջ, անկաւ զպարանոցաւն նո-
21 րա, եւ համբուրեաց զնա։ Եւ ասէ
ցնա որդին, Հայր, մեղայ յերկինս եւ
առաջի քո, ոչ եւս եմ արժանի կոչել
22 որդի քո։ Ասէ հայրն ցծառայս իւր,
[1]Վաղվաղակի հանէք զպատմուճանն
առաջին եւ ագուցէք նմա, եւ տուք
զմատանին ի ձեռս նորա, եւ կօշիկս
23 յոտս նորա. Եւ ածէք զեզն պարարակ,
զենէք, կերիցուք եւ ուրախ լիցուք.
24 Զի այս որդի իմ մեռեալ էր եւ եկեաց,

[1]Յոմանս պակասէ

կորուսեալ էր եւ գտաւ․ եւ սկսան
25 ուրախ լինել։ Եւ էր երէց որդի նորա
յագարակի․ եւ մինչդեռ գայր եւ մերձ
եղեւ ի տունն, լուաւ զձայն երգոց եւ
26 զպարուց․ Եւ կոչեցեալ առ ինքն զմի
ի ծառայիցն՝ հարցանէր թէ զի՞նչ իցէ
27 այն։ Եւ նա ասէ ցնա, Զի եղբայր քո
եկեալ է, եւ եզեն հայր քո զեզն պա-
րարակ, զի ողջամբ ընկալաւ զնա։
28 Բարկացաւ եւ ոչ կամէր մտանել, եւ
հայրն ելեալ արտաքս՝ աղաչէր զնա։
29 Պատասխանի ետ եւ ասէ ցհայրն, Այս-
քանի ամք են, զի ծառայեմ քեզ, եւ
երբեք զպատուիրանաւ քով ոչ անցի․
ուլ մի երբեք ոչ ետուր ինձ զի ուրախ
30 եղէց ընդ բարեկամս իմ։ Յորժամ եկն
որդիդ քո այդ որ եկեր զկեանս քո ընդ
պոռնիկս, զեներ դմա զեզն պարարակ։
31 Եւ ասէ ցնա, Որդեակ, դու հանապազ
ընդ իս ես, եւ ամենայն որ ինչ իմ է՝
32 քո է․ Այլ ուրախ լինել եւ խնդալ
պարտ էր, զի եղբայր քո այս մեռեալ
էր եւ եկեաց, կորուսեալ՝ եւ գտաւ։

## ԳԼ․ ԺԶ

1 ՁԲ․ Եւ ասէ առ աշակերտսն, Այր մի
էր մեծատուն, որոյ էր տնտես․ եւ
եղեւ զնմանէ ամբաստանութիւն, որ-
2 պէս թէ վատնիցէ զինչս նորա։ Կոչեաց
եւ ասէ ցնա, Զի՞նչ է այս զոր լսեմս
զքէն․ տուր զհամար տնտեսութեան
քո, զի ոչ եւս կարես լինել տնտես։
3 Ասէ ընդ միտս իւր տնտեսն, Զի՞նչ
գործեցից, զի տէր իմ հանէ զտնտե-
սութիւնս․ գործել ոչ կարեմ, մուրա-
4 նալ ամաչեմ։ Գիտեմ զինչ արարից,
զի յորժամ ի բաց լինիցիմ ի տնտեսու-
թենէս, ընկալցին զիս ի տունս իւր-
5 եանց։ Եւ կոչեցեալ առ ինքն մի ըստ
միոջէ ի պարտապանաց տեառն իւրոյ,
ասէ ցառաջինն, Քանի՞ ինչ պարտիս
6 տեառն իմում։ Եւ նա ասէ, Հարեւր
մար ձիթոյ․ ասէ ցնա, Կա զգիր քո,
եւ նիստ գրեա վաղվաղակի յիսուն։
7 Դարձեալ ասէ ցմիւսն, Դու քանի՞ ինչ
պարտիս․ եւ նա ասէ, Հարեւր քոռ
ցորենոյ․ եւ ասէ ցնա, Կա զգիր քո,
8 եւ նիստ գրեա ութսուն։ Եւ գովեաց
տէրն զտնտեսն անիրաւութեան, զի
իմաստութեամբ արար․ զի որդիք աշ-
խարհիս այսորիկ իմաստնագոյն են քան
9 զորդիս լուսոյ յազգս իւրեանց։ Եւ ես
ձեզ ասեմ, Արարէք ձեզ բարեկամս
ի մամոնայէ անիրաւութեան․ զի յոր-
ժամ պակասիցէ այն, ընկալցին զձեզ
10 ի յարկսն յաւիտենականս։ Որ ի փո-
քուն հաւատարիմ է՝ եւ ի բազմին հա-
ւատարիմ է, եւ որ ի փոքուն անիրաւ
11 է՝ եւ ի բազմին անիրաւ է։ Իսկ արդ
եթէ յանիրաւ մամոնային չեղէք հա-
ւատարիմք, զճշմարիտն ձեզ ո՞ հաւա-
12 տասցէ։ Եւ եթէ յօտարին չեղէք հա-
13 ւատարիմք, զձերն ո՞ տացէ ձեզ։ Ոչ
ոք ծառայ կարէ երկուց տերանց ծա-
ռայել, զի [1]եթէ զմին ատիցէ, եւ
զմիւսն սիրիցէ․ կամ զմին մեծարիցէ,
եւ զմիւսն արհամարհիցէ․ ոչ կարէք
Աստուծոյ ծառայել եւ մամոնայի։
14 Իբրեւ լսէին զայս ամենայն փարի-
սեցիքն, քանզի արծաթասէրք էին,
15 անգոսնէին զնա։ Եւ ասէ ցնոսա, Դուք
էք որ արդարացուցանէք զանձինս ա-
ռաջի մարդկան, սակայն Աստուած գի-
տէ զսիրտս ձեր․ զի որ առաջի մարդ-
կան բարձր է՝ պիղծ է առաջի Աստու-
16 ծոյ։ Օրէնքն եւ մարգարէք մինչեւ
ցՅովհաննէս․ յայնմ հետէ արքայու-
թիւն Աստուծոյ աւետարանի, եւ ա-
17 մենայն ոք զնա բռնաբարէ։ Դիւրին
իցէ երկնից եւ երկրի անցանել, քան
յօրինացն միոյ նշանախեցի անկանել։
18 Ամենայն որ արձակէ զկին իւր եւ առնէ
այլ՝ շնայ․ եւ որ զարձակեալն առնէ՝
շնայ։
19 Այր ոմն էր մեծատուն, եւ ագանէր
բեհեզս եւ ծիրանիս եւ ուրախ լինէր
20 հանապազ առատապէս։ Եւ աղքատ ոմն
անուն Ղազարոս անկեալ դնէր առ
21 դրան նորա վիրաւորեալ, Եւ ցանկայր
լնուլ զորովայն իւր ի փշրանացն որ
անկանէին ի սեղանոյ մեծատանն․ այլ
եւ շունք եւս գային եւ լզուին զվէրս
22 նորա։ Եւ եղեւ մեռանել աղքատին,
եւ տանել հրեշտակաց զնա ի գոգն Աբ-
րահամու․ մեռաւ եւ մեծատունն եւ
23 թաղեցաւ։ Եւ ի դժոխսն ամբարձ զաչս
իւր մինչ ի տանջանսն էր․ եւ ետես զԱբ-
րահամ ի հեռաստանէ, եւ զՂազարոս
24 ի գոգ նորա [2]հանգուցեալ։ Եւ նա ա-
ղաղակեաց եւ ասէ, Հայր Աբրահամ,
ողորմեաց ինձ, եւ առաքեա զՂազարոս,

---

[1] Յոյժն, կամ

[2] ի բազումս պակասէ

զի թացցէ զծագ մատին իւրոյ ի ջուր,
եւ զովացուսցէ զլեզու իմ, զի պատա-
25 կիմ ի տապոյ աստի: Եւ ասէ ցնա Ա-
բրահամ, Որդեակ, յիշեա զի ընկալար
անդէն զբարիս քո ի կեանսն քում, եւ
Ղազարոս նոյնպէս զչարչարանս. արդ
սա աստ մխիթարի, եւ դու այդր պա-
26 պակիս: Եւ ի վերայ այսր ամենայնի
վիհ մեծ է ընդ մեզ եւ ընդ ձեզ. եթէ
կամիցին աստի առ ձեզ անցանել, ոչ
կարեն, եւ ոչ այտի ոք առ մեզ ան-
27 ցանել: Եւ ասէ, Արդ աղաչեմ զքեզ,
հայր, զի արձակեսցես զդա ի տուն
28 հօր իմոյ, Են իմ անդ եղբարք հինգ,
որպէս զի տացէ նոցա վկայութիւն, զի
մի՛ եւ նոքա գայցեն յայս տեղի տան-
29 ջանաց: Եւ ասէ Աբրահամ, Ունին
զՄովսէս եւ զմարգարէսն, նոցա լուի-
30 ցեն: Եւ նա ասէ, Ոչ, հայր Աբրահամ,
բայց եթէ ի մեռելոց ոք երթիցէ առ
31 նոսա, եւ ապաշխարեսցեն: Եւ ասէ
ցնա, Եթէ Մովսիսի եւ մարգարէիցն
ոչ լսեն, եւ ոչ եթէ ի մեռելոց ոք յառ-
նիցէ, հաւանեսցին:

## ԳԼ. ԺԷ

1 ՁԳ. Ասաց եւ առ աշակերտսն իւր,
Ոչ է մարթ չգալ գայթակղութեան,
բայց վա՜յ այնմիկ է յոյր ձեռն գայցէ:
2 Լաւ էր նմա թէ վէմ երկանաքար կա-
խէր զպարանոցէ նորա եւ անկանէր
ի ծով, քան թէ գայթակղեցուցանէ զմի
3 ոք ի փոքրկանցս յայսցանէ: Զգոյշ կա-
ցէք անձանց. եթէ [1]մեղիցէ եղբայր քո,
սաստեա նմա. եւ եթէ ապաշխարիցէ,
4 թող նմա: Եւ եթէ եւթն անգամ մե-
ղիցէ քեզ, եւ եւթն անգամ դարձցի
ի քեզ եւ ասիցէ, Ապաշխարեմ, թող-
ցես նմա:
5 Եւ ասեն առաքեալքն ցՏէր, Յաւել
6 մեզ հաւատս: Եւ ասէ Տէր, Եթէ ու-
նիցիք հաւատս քան զհատ մանանխոյ,
եւ ասիցէք թթենւոյս այսմիկ, Խլեաց
եւ տնկեաց ի ծովու, եւ հնազանդես-
ցի ձեզ:
7 Իսկ ո՞վ ոք ի ձէնջ, որ ունիցի ծա-
ռայ հողագործ կամ հովիւ, որ իբրեւ
մտանիցէ յագարակէ, ասիցէ ցնա վաղ-
8 վաղակի, թէ Անց բազմեաց. Այլ ո՞չ
ասիցէ ցնա թէ Պատրաստեա զինչ ընթ-
րեաց իցեմ, եւ գօտի ածեալ պաշտեա
զիս, մինչեւ կերայց եւ արբից, եւ
9 ապա կերիցես եւ արբցես դու: Միթէ
շնո՞րհ ինչ ունիցի ծառային այնմիկ,
10 զի արար զամենայն հրամանսն.[2] Նոյն-
պէս եւ դուք յորժամ առնիցէք զամե-
նայն հրամայեալսն ձեզ, ասասջիք թէ
Ծառայք անպիտանք եմք, զոր պար-
տէաքն առնե՛լ արարաք:
11 Եւ եղեւ մինչ երթայր նա յԵրու-
սաղէմ, եւ ինքն անցանէր ընդ մէջ
12 Սամարիայ եւ Գալիլեացւոց: Եւ մինչ-
դեռ մտանէր ի գեղ ուրեմն, պատա-
հեցան նմա տասն այր բորոտ որք կա-
13 ցին ի հեռաստանէ. Բարձին զձայնս
եւ ասեն, Յիսուս վարդապետ, ողոր-
14 մեաց մեզ: Եւ իբրեւ ետես զնոսա,
ասէ ցնոսա, Երթայք, ցուցէք զանձինս
քահանայիցն. եւ եղեւ իբրեւ գնացին,
15 [3]առժամայն սրբեցան: Մի ոմն ի նո-
ցանէ իբրեւ ետես թէ բժշկեցաւ, դար-
ձաւ անդրէն, ի ձայն մեծ փառաւոր
16 առնէր զԱստուած. Անկաւ ի վերայ ե-
րեսաց իւրոց առ ոտս նորա, եւ գո-
հանայր զնմանէ. եւ ինքն էր Սամա-
17 րացի: Պատասխանի ետ Յիսուս եւ
ասէ, Ո՞չ տասն սոքա սրբեցան, իսկ
18 արդ ինունքն ո՞ւր են, Զի ոչ գտան
դառնալ տալ փառս Աստուծոյ, բայց
19 միայն այլազգիս այս: Եւ ասէ ցնա,
Արի գնա, զի հաւատք քո կեցուցին
զքեզ:
20 ՁԴ. Իբրեւ հարցաւ ի փարիսեցւոցն
թէ Ե՞րբ գայցէ արքայութիւնն Ա-
ստուծոյ. պատասխանի ետ նոցա եւ
ասէ, Ոչ գայ արքայութիւնն Աստու-
21 ծոյ խտրանօք. Եւ չասիցեն թէ Ահա-
ւասիկ աստ է կամ Անդ, զի ահա ար-
քայութիւն Աստուծոյ ի ներքս ի ձեզ է:
22 Ասաց եւ առ աշակերտսն, Եկեսցեն
աւուրք ցանկանայցէք ձեզ մի յաւուրցն
Որդւոյ մարդոյ տեսանել, եւ ոչ տե-
23 սանիցէք: Եւ եթէ ասիցեն ձեզ եթէ
Ահաւասիկ է կամ Անդ, մի՛ երթայցէք
24 զհետ: Զի որպէս փայլակն փայլատա-
կեալ ի ներքոյ երկնից ընդ երկնիւք
ծագիցէ, նոյնպէս եւ Որդի մարդոյ
25 յաւուրն իւրում: Բայց նախ պարտ է

[1]Որմանէ, մեղիցէ քեզ

[2]Որմանէ յաւելուած, ոչ կարծեմ:
[3]ի Յոհանու պակասի

նմա բազում չարչարիլ եւ խոտիլ յազ-
26 գէս յայսմանէ ։ Եւ որպէս եղեւ յա-
ւուրսն Նոյի, նոյնպէս եղիցի եւ յա-
27 ւուրս Որդւոյ մարդոյ ։ Ուտէին, ըմ-
պէին, կանայս առնէին եւ արանց լի-
նէին, մինչեւ յօրն յորում եմուտ Նոյ
ի տապանն, եւ եկն ջրհեղեղն եւ կո-
28 րոյս զամենեսին ։ Նոյնպէս եւ որպէս
յաւուրսն Ղովտայ եղեւ, ուտէին, ըմ-
պէին, գնէին, վաճառէին, տնկէին,
29 շինէին. Եւ յորում աւուր ել Ղովտ
ի Սոդոմայ, տեղաց հուր եւ ծծումբ
30 յերկնից եւ կորոյս զամենեսին ։ Ըստ
նմին օրինակի եղիցի եւ յաւուրն յո-
31 րում Որդի մարդոյ յայտնելոց է ։ Յայնմ
աւուր որ կայցէ ի տանիս եւ կարասի
իւր ի տան, մի՛ իջցէ առնուլ զայն.
եւ որ յանդի իցէ, նոյնպէս մի՛ դարձցի
32 յետս ։ Յիշեցէք զկինն Ղովտայ ։ (33) Որ
խնդրիցէ զանձն իւր ապրեցուցանել՝
կորուսցէ զնա. եւ որ կորուսցէ՝ ապ-
34 րեցուսցէ զնա ։ Ասեմ ձեզ, Յայնմ գի-
շերի թէ եղիցին երկու ի մի մահիճս,
35 մին առցի եւ միւսն թողցի ։ Եւ եթէ
եղիցին երկու աղալ ի միասին, մին
առցի եւ միւսն թողցի. եւ եթէ իցեն
երկու յանդի, մին առցի եւ միւսն
36 թողցի ։ Պատասխանի ետուն եւ ասեն
37 ցնա, Յո՞, Տէր ։ Եւ նա ասէ ցնոսա,
Ուր մարմին է, անդր եւ արծուիք
ժողովեսցին ։

## ԳԼ. ԺԸ

1 ՁԵ. Ասաց եւ առակ մի նոցա առ այն
թէ պարտ է յամենայն ժամ կալ նոցա
2 յաղօթս եւ մի՛ ձանձրանալ ։ Ասէ, Դա-
տաւոր մի էր ի քաղաքի ուրեմն, յԱս-
տուծոյ ոչ երկնչէր եւ ի մարդկանէ ոչ
3 ամաչէր ։ Եւ այրի մի էր ի նմին քա-
ղաքի, գայր առ նա եւ ասէր, Դատ
4 արա ինձ յոսոխէ իմմէ ։ Եւ ոչ կամէր
ի բազում ժամանակս. յետ այնորիկ
ասէ ի մտի իւրում, Եթէ եւ յԱստու-
ծոյ ոչ երկնչիմ, եւ ի մարդկանէ ոչ
5 ամաչեմ, Գոնէ վասն աշխատ առնելոյ
զիս այրւոյն՝ արարից նմա դատ զի մի՛
6 ի սպառ եկեալ թախանձիցէ զիս ։ Եւ
ասէ Տէր, Լուարուք զինչ դատաւորն
7 անիրաւութեան ասէր ։ Իսկ Աստուած
ո՞չ առնիցէ վրէժխնդրութիւն [1]ծառա-
յից իւրոց որ աղաղակեն առ նա ի տուէ
եւ ի գիշերի, եւ երկայնամիտ միայն
8 լինիցի առ նոսա ։ Այո, ասեմ ձեզ զի
արասցէ վրէժխնդրութիւն նոցա վաղ-
վաղակի. Իսկ Որդի մարդոյ եկեալ՝
գտանիցէ՞ արդեւք հաւատս յերկրի ։
9 Ասաց եւ առ ոմանս պանծացեալս
յանձինս թէ արդարք իցեն եւ խոտի-
10 ցեն զբազումս, զառակս զայս. Արք
երկու ելին ի տաճարն կալ յաղօթս,
մին փարիսեցի եւ միւսն մաքսաւոր ։
11 Փարիսեցին կայր [2]մեկուսի եւ զայս ա-
ռանձինն աղօթս մատուցանէր, Աստ-
ուած [2]իմ, գոհանամ զքէն, զի ոչ եմ
իբրեւ զայլս ի մարդկանէ, զյափշտա-
կօղս եւ զանիրաւս եւ զշունս կամ իբ-
12 րեւ զայս մաքսաւոր ։ Այլ պահեմ եր-
կիցս ի շաբաթու, եւ տամ տասանորդս
13 յամենայն ստացուածոց իմոց ։ Եւ մաք-
սաւորն կայր մեկուսի, եւ ոչ կամէր
եւ ոչ զաչսն ընդ երկինս ամբառնալ,
այլ կոծէր զկուրծս իւր եւ ասէր, Աստ-
14 ուած, քաւեա զիս զմեղաւորս ։ Ասեմ
ձեզ, էջ սա արդարացեալ ի տուն իւր
քան զնա. զի ամենայն որ բարձրա-
ցուցանէ զանձն իւր՝ խոնարհեսցի. եւ
որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձ-
րասցի ։
15 ՁԶ. Մատուցանէին առ նա եւ ման-
կտի զի մերձենայցէ ի նոսա. իբրեւ
տեսին աշակերտքն, սաստէին նոցա ։
16 Իսկ Յիսուս կոչեցեալ զնոսա առ ինքն՝
ասէ, Թոյլ տուք մանկտւոյդ գալ առ
իս, եւ մի՛ արգելուք զդոսա, զի այդ-
պիսեացդ է արքայութիւն Աստուծոյ ։
17 Ամէն ասեմ ձեզ, Որ ոչ ընդունիցի
զարքայութիւն Աստուծոյ իբրեւ զմա-
նուկ, ոչ մտցէ ի նա ։
18 Եւ եհարց զնա ոմն իշխան եւ ասէ,
Վարդապետ բարի, զի՞նչ գործեցից,
զի զկեանսն յաւիտենականս ժառան-
19 գեցից ։ Ասէ ցնա Յիսուս, Զի՞ ասես
զիս բարի. չիք ոք բարի բայց մի Աս-
20 տուած ։ Զպատուիրանս գիտես. Մի՛
շնար, Մի՛ սպանաներ, Մի՛ գողանար,
Մի՛ սուտ վկայեր, Պատուեա՛ զհայր
21 քո եւ զմայր ։ Եւ նա ասէ, Զայդ ա-
մենայն պահեցի ի մանկութենէ իմմէ ։
22 Իբրեւ լուաւ զայն Յիսուս, ասէ ցնա,
Միւս եւս պակաս է քեզ. զամենայն

---

[1]Յոյնն, ընտրելոց

[2]Ի Յունէն պակասի

ինչ զոր ունիս վաճառեա եւ տուր աղ-
քատաց, եւ ունիցիս գանձս յերկինս,
23 եւ եկ զկնի իմ։ Նա իբրեւ լուաւ զայս,
տրտմեցաւ, քանզի էր մեծատուն յոյժ։
24 Իբրեւ ետես զնա Յիսուս տրտմեալ,
ասէ, Ո՛րպէս դժուարաւ, որ ինչս ու-
նիցին, մտանիցեն յարքայութիւն Աս-
25 տուծոյ։ Դիւրագոյն իցէ մալխոյ ընդ
ծակ ասղան անցանել, քան մեծատան
26 յարքայութիւն Աստուծոյ մտանել։ Եւ
որ լուանն՝ ասէին, Եւ ո՞ կարիցէ ապ-
27 րել։ Եւ նա ասէ, Անհնարինք առ ի
մարդկանէ հնարաւորք են յԱստուծոյ։
28 Եւ ասէ Պետրոս, Ահաւասիկ մեք թո-
ղաք զամենայն ինչ զմեր, եւ եկաք
29 զկնի քո։ Եւ նա ասէ ցնոսա, Ամէն ա-
սեմ ձեզ եթէ Ոչ ոք է որ եթող զտուն,
կամ զծնողս, կամ զեղբարս, կամ զկին,
կամ զորդիս վասն արքայութեան Աս-
30 տուծոյ, Եթէ ոչ առնուցու բազմա-
պատիկ ի ժամանակի յայսմիկ, եւ յաշ-
խարհին որ գալոցն է՝ զկեանսն յաւի-
տենականս ժառանգեսցէ։
31 Եւ առեալ զերկոտասանսն առան-
ձինն՝ ասէ ցնոսա. Ահաւասիկ ելանեմք
յԵրուսաղէմ, եւ կատարեսցին ամե-
նայն գրեալքն մարգարէիւք վասն Որ-
32 դւոյ մարդոյ։ Զի մատնեսցի հեթա-
33 նոսաց, եւ [1]կատակեսցի. Եւ հարկա-
նիցեն եւ սպանանիցեն զնա, եւ յերիր
34 աւուր յարիցէ։ Եւ նոքա ոչինչ իմա-
ցան յայնցանէ, այլ էր բանն ծածկեալ
ի նոցանէ, եւ ոչ գիտէին զասացեալսն։
35 ՁԵ· Եւ եղեւ ի մօտելն նորա յԵրի-
քով, կոյր ոմն նստէր առ ճանապար-
36 հաւն մուրացիկ։ Իբրեւ լուաւ զան-
ցանել ժողովրդեանն, հարցանէր թէ
37 Զի՞նչ իցէ այն։ Եւ պատմեցին նմա
38 թէ Յիսուս Նազովրեցի անցանէ։ Աղա-
ղակեաց եւ ասէ, Յիսուս, Որդի Դաւ-
39 թի, ողորմեաց ինձ։ Եւ որ առաջին
երթային՝ սաստէին նմա զի լռեսցէ.
եւ նա եւս առաւել աղաղակէր, Որդի
40 Դաւթի, ողորմեաց ինձ։ Զտեղի առ
Յիսուս, եւ հրամայեաց ածել զնա առ
իւր. եւ իբրեւ մերձ եղեւ առ նա, ե-
41 հարց զնա եւ ասէ, Զի՞նչ կամիս զու-
զի արարից քեզ. եւ նա ասէ, Տէր,
42 զի բացցին աչք իմ եւ տեսից։ Եւ Յի-
սուս ասէ ցնա, Հայեաց, հաւատք քո
43 կեցուցին զքեզ։ Եւ առժամայն ետես
եւ երթայր զհետ նորա եւ փառաւոր
առնէր զԱստուած. եւ ամենայն ժո-
ղովրդեանն տեսեալ՝ տայր օրհնութիւն
Աստուծոյ։

ԳԼ· ԺԹ

1 Եւ մտեալ շրջէր ընդ Երիքով։ (2) Եւ
ահա այր մի անուն կոչեցեալ Զակ-
քէոս, եւ նա էր մաքսապետ եւ ինքն
3 մեծատուն. Եւ խնդրէր տեսանել եթէ
ով իցէ Յիսուս, եւ ոչ կարէր ի բազ-
4 մութենէն, զի կարճ էր հասակաւ։ Եւ
ընթացեալ յառաջն՝ ել ի ժանտաթզենին
զի տեսանիցէ զնա. քանզի ընդ այն
5 կոյս անցանելոց էր։ Իբրեւ եկն ի տե-
ղին, հայեցաւ ի վեր Յիսուս եւ ասէ
ցնա, Զակքէ, փութա էջ այտի, զի
այսօր ի տան քում արժան է ինձ ա-
6 գանել։ Փութացաւ եւ էջ եւ ընկալաւ
7 զնա ուրախութեամբ։ Իբրեւ տեսին
ամենեքին, տրտնջէին եւ ասէին թէ
Առ առն մեղաւորի եմուտ լուծանել։
8 Եկն եկաց Զակքէոս եւ ասէ ցՏէր,
Տէր, ահա զկէս ընչից իմոց տաց աղ-
քատաց, եւ եթէ զոք զրկեցի, հատու-
9 ցից չորեքկին։ Եւ ասէ ցնա Յիսուս,
Այսօր եղեւ փրկութիւն տանս այսմիկ.
10 քանզի եւ սա որդի Աբրահամու է։ Զի
եկն Որդի մարդոյ խնդրել եւ կեցու-
ցանել զկորուսեալսն։
11 Եւ մինչդեռ նոքա զայն լսէին, յաւել
առակ մի եւ ասէ վասն մերձենալոյ
նորա յԵրուսաղէմ, եւ համարելոյ նո-
ցա եթէ առժամայն յայտնելոց է ար-
12 քայութիւն Աստուծոյ։ Ասէ, Այր ոմն
ազնուական գնաց յաշխարհ հեռի առ-
նուլ իւր թագաւորութիւն եւ դառնալ։
13 Եւ կոչեցեալ [2]զծառայս իւր՝ ետ նոցա
տասն մնաս, եւ ասէ ցնոսա, Յարգե-
14 ցէք զայդ մինչեւ եկից։ Եւ քաղաքա-
ցիքն նորա ատէին զնա, առաքեցին
հրեշտակս զկնի նորա, եւ ասեն թէ
Ոչ կամիմք թագաւորել դմա ի վերայ
15 մեր։ Եւ եղեւ դառնալ նմա առեալ
զթագաւորութիւնն, եւ կոչեաց զծա-
ռայսն որոց տուեալ էր զարծաթն, զի
16 գիտասցէ թէ ո՛ զինչ շահեցաւ։ Եկն
առաջինն եւ ասէ, Տէր, մնասն քո

[1] Յոյնն, կատակեսցի, և նախատեսցի և թքանիցի

[2] Յոյնն, զտասն ծառայս

17 տասն մնաս արար։ Եւ ասէ ցնա,
Ագնիւ, ծառայ բարի, զի ի փոքուն հա-
ւատարիմ եղեր, լինիջիր իշխանութիւն
18 ունել ի վերայ տասն քաղաքի։ Եկն
երկրորդն եւ ասէ, Մնասն քո արար
19 հինգ մնաս։ Ասէ եւ ցնա, Եւ դու լինիջիր
20 ի վերայ հինգ քաղաքաց։ Եկն միւսն
եւ ասէ, Տէր, ահա մնասն քո զոր ու-
21 նէի ծրարեալ ի վարշամակի. Երկնչէի
ի քէն, զի այր ստամբակ ես. բառնաս
զոր ոչ եդիր, եւ հնձես զոր ոչ սեր-
22 մանեցեր։ Եւ ասէ ցնա, Ի բերանոյ
քումմէ դատեցայց զքեզ, ծառայ [1]ան-
հաւատ. գիտէիր թէ ես այր մի ստամ-
բակ եմ, բառնամ զոր ոչ եդի, հնձեմ
23 ուր ոչ սերմանեցի. Եւ ընդէ՞ր ոչ ե-
տուր զարծաթն իմ ի սեղանաւորս, եւ
24 եկեալ ես տոկոսեօք պահանջէի։ Եւ
ասէ ցայտասաւորսն, Առէք ի դմանէ
զմնասն, եւ տարայք տուք այնմ որ
25 ունիցի զտասն մնասն։ (Եւ ասեն ցնա,
26 Տէր, ունի տասն մնաս։) Ասեմ ձեզ
եթէ Ամենայնի որ ունիցի՝ տացի. եւ
յայնմանէ որ ոչն ունիցի, եւ զոր ու-
27 նիցին՝ բարձցի ի նմանէ։ Բայց զթշնա-
միսն իմ զայնոսիկ որ ոչն կամէին զիս
թագաւորել ի վերայ նոցա, ածէք այսր
28 եւ սպանէք առաջի իմ։ Եւ իբրեւ
զայս ասաց, գնաց յառաջ ելանել յԵ-
րուսաղէմ։
29 ԷԿ. Եւ եղեւ իբրեւ մերձեցաւ ի Բեթ-
փագէ եւ ի Բեթանիա մօտ ի լեառնն
որ կոչի Ձիթենեաց, առաքեաց երկուս
30 յաշակերտացն իւրոց եւ ասէ, Երթայք
դուք ի գեղն որ հանդէպ մեր կայ. յոր
իբրեւ մտանէք, գտանիցէք յաւանակ
կապեալ, յորում ոք ի մարդկանէ եր-
բեք ոչ նստաւ. լուծէք զնա եւ ածէք։
31 Եւ եթէ ոք հարցանիցէ զձեզ թէ Ըն-
դէ՞ր լուծանէք, այսպէս ասասջիք ցնա
32 թէ Տեառն իւրում պիտոյ է։ Իբրեւ
չոգան որ առաքեցանն, գտին որպէս
33 ասացն ցնոսա, [2]կայր յաւանակն։" Եւ
մինչդեռ լուծանէին զյաւանակն, ասեն
տեարքն նորա ցնոսա, Զի՞ լուծանէք
34 զյաւանակդ։ Եւ նոքա ասեն, Տեառն
35 իւրում պիտոյ է։ Եւ ածին զնա առ
Յիսուս, եւ արկին զնովաւ հանդերձս
36 եւ հեծուցին զՅիսուս։ Եւ մինչդեռ
երթայր, զհանդերձս իւրեանց տարա-

[1] Յոյնն, չար

[2] Ի Բուլղ. պակասէ

37 ծանէին զճանապարհաւն։ Եւ իբրեւ
այն ինչ մերձ եղեւ ի զառ ի վայր լե-
րինն Ձիթենեաց, սկսաւ ամենայն
բազմութիւն աշակերտացն ուրախու-
թեամբ օրհնել զԱստուած ի ձայն մեծ
վասն ամենայն եղելոց զօրութեանցն
38 զոր տեսին. Եւ ասէին, Օրհնեալ որ
գայ թագաւորդ յանուն Տեառն, խա-
ղաղութիւն յերկինս եւ փառք ի բար-
39 ձունս։ Եւ ոմանք ի փարիսեցւոցն
յամբոխէ անտի ասեն ցնա, Վարդա-
40 պետ, սաստեա աշակերտացդ քոց։ Պա-
տասխանի ետ եւ ասէ, Ասեմ ձեզ զի
եթէ դոքա լռեսցեն, քարինքդ աղա-
ղակեսցեն։
41 Եւ իբրեւ մերձեցաւ, տեսեալ զքա-
ղաքն՝ ելաց ի վերայ նորա, եւ ասէ,
42 Եթէ գիտէիր դու գոնէ յաւուրս յայս-
միկ զխաղաղութիւնն քո. բայց այժմ
43 ծածկեցաւ [3]յերեսաց քոց։ Զի եկեսցեն
աւուրք ի վերայ քո, եւ պատեսցեն
զքեւ թշնամիք քո պատնէշ, եւ պա-
շարեսցեն զքեզ, եւ նեղեսցեն զքեզ
44 յամենայն կողմանց. Եւ յատակեսցեն
զքեզ եւ զորդիս քո ի քեզ. եւ ոչ թո-
ղուցուն քար ի քարի վերայ յամենայ-
նի ի քեզ, փոխանակ զի ոչ ծաներ
զժամանակ այցելութեան քո։
45 Եւ մտեալ ի տաճարն սկսաւ հանել
[4]զաղաւնեվաճառսն եւ զգնողս, եւ
զսեղանս հատավաճառացն ցրուեաց"։
46 Եւ ասէ ցնոսա, Գրեալ է, Եւ եղիցի
տուն իմ տուն աղօթից, եւ դուք ա-
47 րարէք զդա այրս աւազակաց։ Եւ ու-
սուցանէր զնոսա հանապազ ի տաճա-
րին. իսկ քահանայապետքն եւ դպիրք
եւ գլխաւորք ժողովրդեանն խնդրէին
48 զնա կորուսանել, Եւ ոչ գտանէին թէ
զինչ արասցեն, զի ժողովուրդն ամե-
նայն կախեալ կային զնմանէ ի լսել։

## Գլ. Ի

1 ԷԶ. Եւ եղեւ ի միում աւուրցն յայն-
ցանէ, մինչդեռ ուսուցանէր զժողո-
վուրդն ի տաճարի անդ եւ աւետարա-
նէր, հասին ի վերայ քահանայապետքն
2 եւ դպիրք ծերովքն հանդերձ, Եւ ասեն
ցնա, Ասա մեզ, որո՞վ իշխանութեամբ

[3] Յոյնն, յաչաց

[4] Բուլղ., զվաճառողսն. եւ այլ՝ զվաճառողսն եւ զգնողս

գործես դու զայդ, կամ ո՞վ է որ ետ
3 քեզ զայդ իշխանութիւն ։ Պատասխա-
նի ետ եւ ասէ ցնոսա, Հարցից եւ ես
4 ցձեզ բան մի, եւ ասացէք ինձ. Մկըր-
տութիւնն Յովհաննու յերկնի՞ց էր եթէ
5 ի մարդկանէ ։ Եւ նոքա խորհեցան ի
6 միտս իւրեանց եւ ասեն, Եթէ ասեմք,
Յերկնից, ասէ, Իսկ ընդէ՞ր ոչ հաւա-
տացէք նմա. եւ եթէ ասեմք, Ի մարդ-
կանէ, ամենայն ժողովուրդն քարկոծ
առնեն զմեզ. զի հաստատեալ է ի միտս
7 զՅովհաննէ, թէ մարգարէ է ։ Եւ պա-
տասխանի ետուն չգիտել թէ ուստի
8 իցէ ։ Եւ Յիսուս ասէ ցնոսա, Եւ ոչ
ես ասեմ ձեզ որով իշխանութեամբ
առնեմ զայս ։

9 ԻԳ. Սկսաւ ասել առ ժողովուրդն
զառակս զայս. Այր ոմն տնկեաց այգի,
եւ ետ զնա մշակաց. եւ ինքն գնաց
10 ճանապարհ ժամանակս բազումս ։ Եւ
ի ժամու առաքեաց առ մշակսն ծառայ,
զի ի պտղոյ այգւոյն տացեն նմա. եւ
մշակքն գան հարին զնա, եւ արձա-
11 կեցին ունայն ։ Եւ յաւել միւս եւս
ծառայ յղել. նոքա եւ զնա եւս գան
հարին, անարգեցին եւ առաքեցին ու-
12 նայն ։ Եւ յաւել զերրորդն առաքել.
նոքա եւ զնա վիրաւորեցին եւ հանին
13 արտաքս ։ Ասէ տէր այգւոյն, Զի՞նչ
արարից. առաքեցից զորդի իմ սիրելի,
14 թերեւս ի սմանէ պատկառեսցեն ։ Իբ-
րեւ տեսին զնա մշակքն, խորհեցան
ընդ միմեանս եւ ասեն, Սա է ժա-
ռանգն, սպանցուք զսա, զի մեր լինի-
15 ցի ժառանգութիւնն ։ Եւ հանին զնա
արտաքս քան զայգին եւ սպանին. արդ
զի՞նչ արասցէ ընդ նոսա տէր այգւոյն.
16 Ո՞չ ապաքէն գայցէ եւ կորուսանիցէ
զմշակսն զայնոսիկ եւ տացէ զայգին
այլոց ։ Իբրեւ լուան՝ ասեն, Քաւ, մի՛
17 լիցի ։ Եւ նա հայեցեալ ընդ նոսա՝ ասէ,
Իսկ զի՞նչ իցէ այն որ գրեալն է եթէ
Վէմն զոր անարգեցին շինողքն՝ նա ե-
18 ղեւ գլուխ անկեան ։ Ամենայն որ ընդ-
հարցի ընդ վէմս ընդ այս՝ խորտակես-
ցի, եւ յորոյ վերայ անկցի՝ հոսեսցէ
19 զնա ։ Եւ խնդրէին դպիրքն եւ քահա-
նայապետք արկանել ի նա ձեռս ի նմին
ժամու, եւ երկեան ի ժողովրդենէն,
զի գիտացին թէ առ նոսա ասաց զա-
ռակն զայն ։

20 ԻԴ. Եւ ապա սպասեցին, եւ առա-
քեցին զաւաճանս կեղծաւորեալս զան-
ձինս առ արդարս ունել, զի ըմբռնես-
ցեն զնա բանիւք, առ ի մատնել զնա
պետութեան եւ իշխանութեան դատա-
21 ւորին ։ Հարցին ցնա եւ ասեն, Վար-
դապետ, գիտեմք եթէ ուղիղ խօսիս
եւ ուսուցանես, եւ ոչ առնուս ակն,
այլ ճշմարտութեամբ զճանապարհն Աս-
22 տուծոյ ուսուցանես. Արժա՞ն է մեզ
23 կայսեր հարկս տալ թէ ոչ ։ Եւ նայե-
ցեալ ընդ խորամանկութիւն նոցա՝
24 ասէ [1]ցնոսա, Ցուցէք" ինձ զդահեկանն.
[2]եւ նոքա ցուցին. եւ ասէ," Զո՞յր
պատկեր եւ զգիր ունի. պատասխանի
25 ետուն եւ ասեն, Զկայսեր ։ Եւ նա
ասէ ցնոսա, Արդ երթայք տուք զկայ-
սերն կայսեր, եւ զԱստուծոյն՝ Աստու-
26 ծոյ ։ Եւ ոչ կարացին զնա ըմբռնել բա-
նիւք առաջի ժողովրդեանն. եւ զար-
մացեալ ընդ պատասխանին նորա՝
լռեցին ։

27 ԻԵ. Մատուցեալ ոմանք ի սադու-
կեցւոցն, որք հակառակէին չլինել յա-
28 րութեան, հարցին ցնա Եւ ասեն,
Վարդապետ, Մովսէս գրեաց մեզ, Եթէ
ուրուք եղբայր մեռանիցի, որոյ իցէ
կին, եւ նա անորդի [3]իցէ, զի առցու-
ցէ եղբայր նորա զկինն, եւ յարուսցէ
29 զաւակ եղբօր իւրում ։ Արդ եւթն եղ-
բարք էին. եւ առաջնոյն առեալ կին՝
30 մեռաւ անորդի ։ Առ զնա եւ երկրորդն,
31 մեռաւ եւ նա անորդի ։ Առ զնա եւ
երրորդն, նոյնպէս եւ եւթանեքին, եւ
32 ոչ թողին [4]որդիս ։ Մեռաւ" եւ կինն ։
33 Արդ ի յարութեան ո՞ւմ ի նոցանէ լի-
նիցի կին. զի եւթանեքին կալան զնա
34 կին ։ Պատասխանի ետ նոցա Յիսուս
եւ ասէ, Որդիք աշխարհիս այսորիկ
35 կանայս առնեն եւ արանց լինին. Իսկ
որ արժանի լինիցին այնմ աշխարհի
հասանել եւ յարութեանն որ ի մե-
ռելոց՝ ոչ կանայս առնեն եւ ոչ արանց
36 լինին ։ Քանզի եւ ոչ մեռանել եւս կա-
րեն, զի հաւասար հրեշտակաց են, եւ
որդիք Աստուծոյ, քանզի յարութեան
37 որդիք են ։ Այլ զի յառնեն մեռեալք,
եւ Մովսէս զուշակեաց ի մորենւոջն,

---

[1]Ոմանք, ցնոսա, Զի՞ փորձէք զիս. ցուցէք
[2]Յոմանս պակասէ
[3]Ոմանք, իցէ ի մեռանելն
[4]Բազումք, որդիս և մեռանի։ (32) Յետ ամենե-
ցուն մեռաւ

որպէս ասէ զՏէառնէ [1]Աստուծոյ Աբ-
րահամու եւ [1]զԱստուծոյ Իսահակայ եւ
38 [1]զԱստուծոյ Յակովբայ։ Եւ Աստուած
չէ մեռելոց, այլ կենդանեաց, զի ա-
39 մենեքին նմա կենդանի են։ Պատաս-
խանի ետուն ոմանք ի դպրացն եւ ա-
սեն, Վարդապետ, բարւոք ասացեր։
40 Եւ ոչ եւս ոք իշխէր հարցանել զնա
եւ ոչինչ։
41 ՃԶ. Ասէ եւ առ նոսա, Զիա՞րդ ա-
սեն զՔրիստոսէ թէ որդի է Դաւթի.
42 Զի ինքն Դաւիթ ասէ ի գիրս Սաղմո-
սաց, Ասաց Տէր ցՏէր իմ, Նիստ ընդ
43 աջմէ իմմէ, Մինչեւ եդից զթշնամիս
44 քո պատուանդան ոտից քոց։ Իսկ արդ
եթէ Դաւիթ զնա Տէր կոչէ, զիա՞րդ
որդի նորա իցէ։
45 Եւ լուեալ ամենայն ժողովրդեանն
46 ասէ ցաշակերտսն, Զգոյշ լերուք ի
դպրացն, որ կամին պատմուճանօք
շրջել, եւ սիրեն ողջոյնս ի հրապա-
րակս, եւ զնախաթոռս ի ժողովուրդս,
47 եւ զգահերէցս յընթրիս. Որ ուտեն
զտունս այրեաց, եւ պատճառանօք
յերկարեն զաղօթս. նոքա ընկալցին
աւելի դատաստանս։

ԳԼ. ԻԱ

1 Եւ հայեցեալ ետես զմեծատունսն որ
արկանէին զտուրս իւրեանց ի գան-
2 ձանակն։ Ետես եւ զկին ոմն այրի աղ-
քատ, որ արկ անդր երկուս լումայս։
3 Եւ ասէ, Արդարեւ ասեմ ձեզ, զի այ-
րին այն աղքատ աւելի արկ քան զա-
4 մենեսին։ Ամենեքին նոքա ի մթերից
իւրեանց արկին յընծայսն [2]Աստուծոյ,
բայց նա ի կարօտութենէ իւրմէ զա-
մենայն զկեանս իւր զոր ունէր՝ արկ։
5 ՃԷ. Եւ յասել ոմանց զտաճարէն թէ
գեղեցիկ վիմօք եւ [3]աշտարակօք զար-
6 դարեալ է, ասէ, Զայդ ամենայն զոր
տեսանէք, եկեսցեն աւուրք յորս ոչ
թողցի այդր քար ի քարի վերայ որ
7 ոչ քակտեսցի։ Հարցին ցնա եւ ասեն,
Վարդապետ, ե՞րբ լինիցի այդ, եւ զի՞նչ
8 նշան իցէ յորժամ այդ լինելոց իցէ։ Եւ
նա ասէ, Զգոյշ կացէք, մի՛ խաբիցիք.
զի բազումք գայցեն յանուն իմ, եւ
ասիցեն թէ Ես եմ, եւ մերձեցաւ ժա-
9 մանակ. մի՛ երթայցէք զկնի նոցա։ Եւ
յորժամ լսիցէք պատերազմունս եւ
խռովութիւնս, մի՛ զարհուրիցիք. զի
պարտ է նախ այնմ լինել, այլ ոչ առ-
10 ժամայն կատարած։ Յայնժամ ասէ
ցնոսա, Յարիցէ ազգ յազգի վերայ եւ
թագաւորութիւն ի թագաւորութեան
11 վերայ. Եւ շարժմունք [4]մեծամեծք.
եւ ի տեղիս տեղիս սովք՝ եւ սրածու-
թիւնք եղիցին. արհաւիրք եւ նշանք
12 մեծամեծք յերկնից։ Բայց յառաջ քան
զայս ամենայն մխեսցեն զձեռս իւր-
եանց ի ձեզ եւ հալածեսցեն, մատնես-
ցեն ի ժողովուրդս եւ ի բանտս, եւ
տանիցին առաջի թագաւորաց եւ դա-
13 տաւորաց վասն անուան իմոյ։ Եւ լի-
14 նիցի ձեզ այն ի վկայութիւն։ Արդ դիք
ի սիրտս ձեր, մի՛ յառաջագոյն կրթել
15 տալոյ պատասխանի։ Զի ես տաց ձեզ
բերան եւ իմաստութիւն, որում ոչ
կարիցեն կալ հակառակ կամ տալ պա-
տասխանի ամենայն հակառակորդքն
16 ձեր։ Մատնեսջիք եւ ի ծնողաց եւ յեղ-
բարց եւ յազգականաց եւ ի բարեկա-
17 մաց, եւ սպանանիցեն ի ձէնջ. Եւ ե-
ղիջիք ատեցեալք յամենեցունց վասն
18 անուան իմոյ. Եւ մազ մի ի գլխոյ ձեր-
19 մէ ոչ կորիցէ։ Եւ համբերութեամբ
ձերով ստասջիք զոգիս ձեր։
20 Այլ յորժամ տեսանիցէք շուրջ պա-
տեալ զօրօք զԵրուսաղէմ, յայնժամ
գիտասջիք թէ մերձ է աւեր նորա։
21 Յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝ փա-
խիցեն ի լերինս, եւ որ ի միջի նորա
իցեն՝ խուսեսցեն, եւ որ ի գաւառսն
22 իցեն՝ մի՛ մտցեն ի նա։ Զի աւուրք
վրէժխնդրութեան են այնոքիկ առ ի
23 կատարելոյ ամենայն գրելոց։ Բայց վա՜յ
իցէ յղեաց եւ ստնտուաց յաւուրսն
յայնոսիկ. զի եղիցի տագնապ մեծ ի
վերայ երկրի, եւ բարկութիւն՝ ժողո-
24 վրրդեանն այնմիկ։ Եւ անկցին ի սուր
սուսերի, եւ գերեսցին յամենայն հե-
թանոսս. եւ Երուսաղէմ եղիցի կոխան
ազգաց, մինչեւ կատարեսցին ժամա-
25 նակք հեթանոսաց։ Եւ եղիցին նշանք
յարեգակն եւ ի լուսին եւ յաստեղս,
եւ յերկրի տագնապ հեթանոսաց՝ յահեղ
բարբառոյ [6]հրրեւ ծովու եւ [6]խռովու-

[1]Յոյնն, Աստուած
[2]Յոմանս պակասէ
[3]Յոյնն նուէրօք
[4]Ոմանք, մեծամեծք ի տեղիս տեղիս, և սովք
[5]ի Յոյնին պակասէ
[6]Յոյնն, ալեաց

26 թեան, Ցելանելոյ ոգւոց մարդկան յեր-
կիւղէ եւ ի կարծեաց եկելոց ի վերայ
տիեզերաց. զի զօրութիւնք երկնից
27 շարժեսցին: Եւ յայնժամ տեսցեն զՈր-
դի մարդոյ եկեալ ամպովք զօրութեամբ
28 եւ փառօք բազմօք: Եւ յորժամ սկսա-
նիցի այս լինել, ամբարձջիք եւ բարձ-
րացուսջիք զգլուխս ձեր, զի մերձ է
փրկութիւն ձեր:
29 Եւ ասաց առակ մի նոցա, Տեսէք
30 զթզենին եւ զամենայն ծառ. Յորժամ
[1]ցուցանիցեն զպտուղ իւրեանց", տե-
սանէք եւ ի նոցանէ ճանաչէք եթէ
31 մերձ է ամառն: Նոյնպէս եւ դուք
յորժամ տեսանիցէք զայս ամենայն
եղեալ, գիտասջիք թէ մերձ է արքա-
32 յութիւն Աստուծոյ: Ամէն ասեմ ձեզ
թէ Ոչ անցցէ ազգս այս, մինչեւ այս
33 ամենայն եղիցի: Երկինք եւ երկիր անց-
34 ցեն, եւ բանք իմ ոչ անցանիցեն: Զգոյշ
լերուք անձանց, գուցէ ծանրանայցեն
սիրտք ձեր շուայտութեամբ եւ արբե-
ցութեամբ եւ հոգովք աշխարհակա-
նօք, եւ յանկարծակի հասանիցէ ի վե-
35 րայ ձեր օրն այն. Զի իբրեւ զորո-
գայթ հասանիցէ ի վերայ ամենեցուն
որ բնակեալ են ընդ ամենայն երեսս
36 երկրի: Արթուն կացէք այսուհետեւ,
յամենայն ժամ աղօթս արարէք, զի
արժանի լինիջիք զերծանել յայնմ ա-
մենայնէ որ լինելոց է, եւ կալ առա-
ջի Որդւոյ մարդոյ:
37 Եւ ի տուէ ի տաճարին ուսուցա-
նէր, եւ զգիշերս ելեալ ագանէր ի լե-
38 րինն որ կոչէր Ձիթենեաց: Եւ ամե-
նայն ժողովուրդն կանխէր ընդ առա-
ւօտս առ նա ի տաճարն լսել ի նմանէ:

Վ.Ջ

## ԳԼ. ԻԲ

1 Մերձեցաւ տօն բաղարջակերացն որ
2 կոչէր Պասքա. Եւ խնդրէին քահա-
նայապետքն եւ դպիրք թէ ո՛րպէս
սպանանիցեն զնա, բայց երկնչէին ի
ժողովրդենէ անտի:
3 Ապա եմուտ Սատանայ ի Յուդա ի
կոչեցեալն Իսկարիովտացի, որ էր ի
4 թուոյ երկոտասանիցն: Զօդաւ եդ
բանս ընդ քահանայապետսն եւ ընդ
դպիրս եւ ընդ իշխանս ժողովրդեանն,
5 զի մատնեսցէ զնա նոցա: Եւ խնդա-
ցին եւ խոստացան տալ նմա արծաթ:
6 Եւ յանձն առ եւ խնդրէր պարապ
մատնել զնա նոցա՝ մեկուսի յամբո-
խէն:
7 Եկն օր բաղարջակերացն, յորում
8 օրէն էր զենուլ զպասեքն: Եւ առա-
քեաց զՊետրոս եւ զՅովհաննէս եւ ա-
սէ, Երթայք պատրաստեցէք մեզ զպա-
9 սեքն զի կերիցուք: Եւ նոքա ասեն,
10 Ո՞ւր կամիս զի պատրաստեսցուք: Եւ
ասէ ցնոսա, Ահա իբրեւ մտանիցէք ի
քաղաքն, պատահեսցէ ձեզ այր մի
բարձեալ սափոր ջրոյ. երթիջիք զհետ
11 նորա ի տունն յոր մտանիցէ. Եւ ա-
սասջիք ցտանուտէր տանն, Վարդա-
պետ ասէ քեզ, Ո՞ւր են վանքն [2]իմ,
յորում զպասեքն ուտիցեմ աշակեր-
12 տօքս հանդերձ: Եւ նա ցուցցէ ձեզ
վերնատուն մի մեծ զարդարեալ, [3]եւ
13 անդ պատրաստեսջիք: Եւ գնացեալ
գտին որպէս եւ ասացն նոցա, եւ
պատրաստեցին զպասեքն:
14 Եւ իբրեւ ժամ եղեւ, բազմեցաւ,
եւ երկոտասան առաքեալքն ընդ նմա:
15 Եւ ասէ ցնոսա, Ցանկանալով ցանկա-
ցայ զայս պասեք ուտել ընդ ձեզ, մինչ-
16 չեւ չարչարեալ իցեմ: Բայց ասեմ ձեզ
թէ ոչ եւս կերայց ի սմանէ, մինչեւ լցցի
17 յարքայութեան Աստուծոյ: Եւ ընկա-
լեալ բաժակ՝ գոհացաւ եւ ասէ, Առէք
18 զայդ եւ բաժանեցէք ի ձեզ: Ասեմ ձեզ
թէ յայսմ հետէ ոչ արբից ի բերոյ որ-
թոյ, մինչեւ եկեսցէ արքայութիւն
Աստուծոյ:
19 Եւ առեալ հաց՝ գոհացաւ, եբեկ եւ
ետ նոցա եւ ասէ, Այս է մարմին իմ,
[4]որ վասն բազմաց տուեալ". զայս ա-
20 րասջիք առ իմոյ յիշատակի: Նոյնպէս
եւ զբաժակն յետ ընթրեացն առ եւ
ասէ, Այս բաժակ է նոր ուխտ իմով
արեամբ վասն ձեր հեղեալ:
21 Բայց ահաւասիկ ձեռն մատնչի իմոյ
22 ընդ իս ի սեղանս: Եւ Որդի մարդոյ
ըստ սահմանելոյն երթայ, բայց վա՜յ
մարդոյն այնմիկ յոյր ձեռն մատնեսցի:
23 Եւ նոքա սկսան խնդրել ընդ միմեանս,
թէ ո՛վ է ի նոցանէ որ զայն գործելոց
իցէ:

---

[1]Բազումք, բողբոջեսցին

[2]Յօրինակս գրչագրէ
[3]ի բազումս գրչագրէ
[4]ի բազումս, որ վասն ձեր տուեալ. յայլս՝ գրչագրէ

24 Եւ եղեւ հակառակութիւն ի մէջ
նոցա թէ ո՛վ ի նոցանէ համարիցի մեծ։
25 Եւ նա ասէ ցնոսա, Թագաւորք ազ-
գաց տիրեն նոցա, եւ որ իշխենն նո-
26 ցա՝ բարերարք կոչին. Այլ դուք ոչ
այնպէս, այլ որ մեծն է ի ձեզ՝ եղիցի
իբրեւ զկրտսերն, եւ առաջնորդն՝ իբ-
27 րեւ զսպասաւորն։ Ո՞վ է մեծ, բազ-
մեա՞լն եթէ սպասաւորն. ո՞չ ապաքէն
բազմեալն. բայց ես եմ ի միջի ձե-
28 րում իբրեւ սպասաւոր։ Եւ դուք էք
որ ցանգ կայիք ընդ իս ի փորձութիւնս
29 իմ. Եւ ես ուխտեմ ձեզ, որպէս եւ
Հայր իմ ուխտեաց ինձ, զարքայու-
30 թիւն. Զի ուտիցէք եւ ըմպիցէք ի սե-
ղան իմ յարքայութեանն իմում, եւ
նստիցիք [1]յերկոտասան աթոռ" դա-
տել զերկոտասան ազգն Իսրայելի։
31 Եւ ասէ Տէր, Սիմո՛ն, Սիմո՛ն, ա-
հա Սատանայ խնդրեաց զձեզ խարբա-
32 լել իբրեւ զցորեան. Այլ ես աղաչեցի
վասն քո զի մի՛ պակասեսցէ հաւատք
քո. եւ դու երբեմն դարձցիս եւ հաս-
33 տատեսցես զեղբարս քո։ Եւ նա ասէ
ցնա, Տէր, ընդ քեզ պատրաստ եմ ե՛ւ
34 ի բանտ ե՛ւ ի մահ երթալ։ Եւ նա ա-
սէ ցնա, Ասեմ քեզ, Պետրէ, չիցէ այ-
սօր հաւու խօսել՝ մինչեւ երիցս ու-
րասցիս զիս չգիտել։
35 Եւ ասէ ցնոսա, Յորժամ առաքեցի
զձեզ առանց քսակի եւ մախաղի եւ
կօշկաց, միթէ կարօտացա՞յք իմիք։
36 Եւ նոքա ասեն, Եւ ոչ իմիք. ապա
ասէ, Այլ այժմ որ ունիցի քսակ՝
բարձցէ, նոյնպէս եւ մախաղ. եւ որ
ոչն ունիցի՝ վաճառեսցէ զձորձս իւր
37 եւ գնեսցէ իւր սուսեր։ Բայց ասեմ
ձեզ, զի այս եւս որ գրեալ է՝ պարտ
է զի կատարեսցի յիս թէ Ընդ անօրէնս
համարեցաւ. զի որ վասն իմ ինչ է՝
38 վճարեալ է։ Եւ նոքա ասեն, Տէր, ա-
հաւասիկ են աստ երկու սուրք. եւ
նա ասէ ցնոսա, Բաւական են։
39 Եւ ելեալ գնաց ըստ սովորութեանն
ի լեառն Ձիթենեաց. գնային զհետ նո-
40 րա եւ աշակերտքն։ Իբրեւ եհաս ի
տեղին, ասէ ցնոսա, Յաղօթս կացէք
41 չմտանել ի փորձութիւն։ Եւ ինքն մեկ-
նեցաւ ի նոցանէ իբրեւ քարընկէց մի,
42 եդ ծունր, կայր յաղօթս, Եւ ասէր,
Հայր, եթէ կամիս, անցո զբաժակս
զայս յինէն. բայց ոչ իմ կամք, այլ
43 քոյդ լիցին։ Եւ երեւեցաւ նմա հրեշ-
տակ յերկնից եւ զօրացուցանէր զնա.
եւ էր ի տագնապի, եւ մտադիւրու-
44 թեամբ եւս կայր յաղօթս։ Եւ հոսէին
ի նմանէ քրտունք իբրեւ զկայլակս
արեան [2]ոլոռն ոլոռն" հեղեալ յերկիր։
45 Եւ յարուցեալ յաղօթիցն՝ եկն առ ա-
շակերտսն, եգիտ զնոսա ի քուն ի
46 տրտմութենէն. Եւ ասէ ցնոսա, Զի՞
ննջէք. արիք, կացէք յաղօթս՝ զի մի՛
մտանիցէք ի փորձութիւն։
47 Եւ մինչդեռ խօսէր, ահաւասիկ ամ-
բոխ, եւ որ կոչէրն Յուդա, մի յերկո-
տասանիցն, առաջնորդէր նոցա. [3]իբ-
րեւ մերձեցաւ առ Յիսուս, համբուր-
եաց զնա". [4]քանզի զայն նշան տուեալ
էր նոցա, թէ Ընդ որում ես համբու-
48 րեցից, նա է, զնա ունիցիք։" Ասէ ցնա
Յիսուս, Յուդա, համբուրելո՞վ մատ-
49 նես զՈրդի մարդոյ։ Իբրեւ տեսին
որ զնովաւն էին որ ինչ եղեւն, ասեն
ցնա, Տէր, հարցո՞ւք զնոսա սրով։
50 Եւ եհար մի ոմն ի նոցանէ զքահա-
նայապետին ծառայ, եւ ի բաց եհան
51 զաջոյ ունկն նորա։ Պատասխանի ետ
Յիսուս եւ ասէ, Թոյլ տուք մինչեւ
ցայդ վայր. եւ մատուցեալ յունկն՝
52 բժշկեաց զնա։ Եւ ասէ ցեկեալսն ի
վերայ նորա, ցքահանայապետսն եւ
ցիշխանս տաճարին եւ ցծերսն, Իբրեւ
ի վերայ աւազակի՞ ելէք սուսերօք
53 եւ բրօք։ Հանապազ ընդ ձեզ էի ի
տաճարին, եւ ոչ ձգեցէք ձեռս յիս.
այլ այս է ձեր ժամ եւ իշխանութիւն
խաւարի։
54 Եւ կալեալ զնա՝ ածին եւ մուծին
ի տուն քահանայապետին. եւ Պետ-
րոս երթայր զկնի նորա հեռագոյն։
55 Իբրեւ լուցին կրակ ի մէջ գաւթին եւ
նստան շուրջ, նստաւ եւ Պետրոս ի
56 մէջ նոցա։ Ետես զնա աղախին ոմն
զի նստէր առ լոյսն, հայեցաւ ընդ նա
եւ ասէ, Եւ սա ընդ նոսա էր որ ընդ
57 նմայն էին։ Իսկ Պետրոս ուրացաւ եւ
58 ասէ, Ոչ գիտեմ զնա, կին դու։ Եւ
յետ սակաւ միոյ այլ ոմն ետես զնա
եւ ասէ, Եւ դու ի նոցանէ ես. եւ

[1]Բազումք, յաթոռս

[2]ի Յունէն պակասէ
[3]Յոյնն, և մերձեցաւ առ Յիսուս համբուրել զնա
[4]ի Բազումս պակասէ

Պետրոս ասէ, Այր դու, չեմ ի նոցա-
59 նէ։ Եւ իբրեւ ժամ մի անց ի վերայ,
այլ ոմն վիճէր եւ ասէր, Ստոյգ եւ
սա ընդ նմա էր, քանզի Գալիլեացի է։
60 Ասէ Պետրոս, Այր դու, չգիտեմ զինչ
խօսիդ. եւ առժամայն մինչդեռ նա
61 զայն ասէր, խօսեցաւ հաւ։ Դարձաւ
Տէր եւ հայեցաւ ի Պետրոս. եւ յիշեաց
Պետրոս զբանն Տեառն զոր ասաց ցնա,
Մինչչեւ հաւու խօսեալ իցէ, [1]երիցս
62 ուրասցիս [2]չգիտել զիս։ Եւ ելեալ ար-
տաքս՝ ելաց դառնապէս։
63 Եւ արքն, որ պահէին զնա, այպն
64 առնէին զնովաւ եւ հարկանէին։ Ծած-
կէին զերեսս նորա [2]եւ տանջէին", եւ
հարցանէին ցնա եւ ասէին, Մարգար-
65 եաց, ո՞վ է որ եհարն զքեզ։ Եւ այլ
բազում ինչ հայհոյութեամբ խօսէին
ի նա։
66 Եւ իբրեւ այգ եղեւ, ժողովեցաւ
ծերակոյտ ժողովրդեանն, քահանայա-
պետքն եւ դպիրք, եւ հանին ածին
զնա յատեանն իւրեանց եւ ասեն, Եթէ
67 դու ես Քրիստոսն, ասա մեզ։ Ասէ
ցնոսա, Եթէ ասացից ձեզ, սակայն ոչ
68 հաւատայք. Եւ եթէ հարցից ինչ զձեզ,
չտայք ինձ պատասխանի կամ արձա-
69 կիցէք։ Բայց յայսմ հետէ նստցի Որդի
մարդոյ ընդ աջմէ զօրութեանն Աս-
70 տուծոյ։ Եւ ասեն ամենեքեան, Ու-
րեմն դու ես Որդի՞ն Աստուծոյ. եւ նա
ասէ ցնոսա, Դուք ասէք թէ ես եմ։
71 Եւ նոքա ասեն, Զի՞նչ եւս պիտոյ է
մեզ վկայութիւն, զի մեզէն իսկ լուաք
ի բերանոյ դորա։

## ԳԼ. ԻԳ

1 Եւ յարուցեալ ամենայն բազմութիւնն
2 նոցա, ածին զնա առ Պիղատոս։ Եւ
սկսան չարախօս լինել զնմանէ եւ ա-
սել, Գտաք զսա զի թիւրէր զազգս
մեր, եւ արգելոյր ի տալոյ հարկս Կայ-
սեր, եւ ասէր զանձնէ եթէ Քրիստոսն
3 իցէ թագաւոր։ Իսկ Պիղատոս եհարց
զնա եւ ասէ, Դո՞ւ ես թագաւորն
Հրէից. նա պատասխանի ետ նմա եւ
4 ասէ, Դու ասացեր։ Ասէ Պիղատոս
ցքահանայապետսն եւ ցժողովուրդսն,
Զգտանեմ ինչ վնաս յառնս յայսմիկ։

[1]Ոմանք, այսօր երիցս   [2]Ի Բազումս պակասէ

5 Եւ նոքա պնդէին եւ ասէին եթէ Խռովէ
զժողովուրդս, ուսուցանէ ընդ ամե-
նայն Հրէաստան՝ սկսեալ ի Գալիլեէ
6 մինչեւ ցայսր։ Իսկ Պիղատոս իբրեւ
լուաւ զԳալիլեէ, եհարց եթէ Գալիլ-
7 եացի՞ իցէ այրն։ Եւ իբրեւ գիտաց թէ
յիշխանութենէ Հերովդի է, ետ տանել
զնա առ Հերովդէս. քանզի եւ նա յԵ-
8 րուսաղէմ էր յաւուրսն յայնոսիկ։ Եւ
Հերովդէս իբրեւ ետես զՅիսուս, ու-
րախ եղեւ յոյժ, զի ցանկայր ի բազում
ժամանակաց տեսանել զնա. քանզի
լսէր բազում անգամ զնմանէ, եւ ակն
ունէր նշան ինչ լինել տեսանել ի նմա-
9 նէ։ Հարցանէր զնա բանիւք բազմօք.
եւ նա ոչինչ ետ նմա պատասխանի։
10 Կային քահանայապետքն եւ դպիրք եւ
11 պնդագոյնս չարախօսէին զնմանէ։ Ար-
համարհեաց զնա եւ Հերովդէս հանդերձ
իւրովք զօրականօքն, եւ այպն արար-
եալ՝ արկ զնովաւ հանդերձս սպիտակս,
եւ ետ տանել անդրէն առ Պիղատոս։
12 Եւ եղեն բարեկամք Պիղատոս եւ Հե-
րովդէս յաւուր յայնմիկ, քանզի յա-
ռաջ թշնամիք էին միմեանց։
13 Կոչեաց Պիղատոս զքահանայապետսն
14 եւ զիշխանս եւ զժողովուրդն, Եւ ասէ
ցնոսա, Ածէք մատուցէք ինձ զայրս
զայս իբրեւ զխոտորեցուցիչ ժողովր-
դեանն. եւ ահաւասիկ առաջի ձեր դա-
տեցայ, եւ վնաս ինչ ոչ գտի յառնս յայս-
միկ՝ զորոց դուք չարախօսէքդ զդմա-
15 նէ։ Այլ եւ ոչ Հերովդէս, քանզի [3]ետու
տանել զդա առ նա". եւ արդ ոչինչ մա-
16 հու արժանի է գործեալ դորա. Խրա-
17 տեցից զդա եւ արձակեցից։ Զի հարկ
էր մի մի ըստ տօնի արձակել նոցա։
18 Եւ նոքա աղաղակէին ամենայն բազ-
մութեամբն եւ ասէին, Բարձ զդա եւ
19 արձակեա մեզ զԲարաբբա. Որ էր վասն
խռովութեան իրիք եղելոյ ի քաղաքին
20 եւ սպանութեան մտեալ ի բանտ։ Դար-
ձեալ Պիղատոս սկսաւ խօսել, քանզի
21 կամէր արձակել զՅիսուս։ Եւ նոքա
անդրէն աղաղակէին եւ ասէին, [4]Ի խաչ
22 հան" զդա։ Եւ նա [5]երիցս ասէ ցնոսա,
Զի՞նչ չար արար սա. ոչինչ վնաս
մահու գտի ի սմա, խրատեցից զսա

[3]Ոմանք, առաքեցի զձեզ առ նա, այլ՝ առա-
քեաց զնա առ մեզ
[4]Բազումք, Ի խաչ հան, ի խաչ հան
[5]Յայլն, երրորդ անգամ

23 եւ արձակեցից։ Եւ նոքա ստիպէին
մեծաձայն եւ խնդրէին զնա ի խաչ հա-
նել, եւ զօրանային բարբառք նոցա եւ
24 քահանայապետիցն։ Եւ Պիղատոս հա-
ւանեցաւ առնել զհայցուածս նոցա։
25 Արձակեաց նոցա [1]զԲարաբբայն՝ զոր
վասն խռովութեան եւ սպանութեան
արկեալ էր ի բանտ, զոր եւ խնդրէինն
իսկ, եւ զՅիսուս մատնեաց կամաց
նոցա։
26 Իբրեւ տարին զնա, ըմբռնե-
ցին զոմն Սիմոն Կիւրենացի որ գայր
յանդէ, եդին ի վերայ նորա զխաչն բե-
27 րել զկնի Յիսուսի։ Եւ երթայր զհետ
նորա բազմութիւն ժողովրդեանն եւ
կանանց որ կոծէին եւ ողբային զնա։
28 Դարձաւ Յիսուս եւ ասէ ցնոսա,
Դստերք Երուսաղեմի, մի՛ լայք ի վե-
րայ իմ, այլ լացէք ի վերայ անձանց
29 եւ ի վերայ որդւոց ձերոց։ Զի եկես-
ցեն աւուրք, յորս ասիցեն թէ Երանի
ամլոց եւ որովայնից որ ոչ ծնան, եւ
30 ստեանց՝ որ ոչ դիեցուցին։ Յայնժամ
սկսանիցին ասել լերանց թէ Անկե-
րուք ի վերայ մեր, եւ բլրոց՝ թէ
31 Ծածկեցէք զմեզ։ Զի եթէ ընդ փայտ
դալար զայս առնեն, ընդ չորն զի՞նչ
լինիցի։
32 Ածին եւ այլ երկուս, չարագործս,
33 սպանանել ընդ նմա։ Իբրեւ չոգան ի
տեղին կոչեցեալ Գագաթն, անդ հա-
նին զնա ի խաչ, եւ զչարագործսն,
զոմն ընդ աջմէ եւ զոմն ընդ ձախմէ
34 [2]խաչեցին։ Եւ Յիսուս ասէ, Հայր,
թող զոցա, զի ոչ գիտեն զինչ գոր-
ծեն։ Եւ ի բաժանել զհանդերձս նորա
35 արկին վիճակս։ Եւ կայր ժողովուրդն
հայեցեալ. անգոսնէին զնա իշխանքն
հանդերձ նոքօք եւ ասէին, Զայլս ապ-
րեցոյց, ապրեցուսցէ եւ զանձն, եթէ
դա է Քրիստոս [3]Որդի Աստուծոյ ընտ-
36 րեալն"։ Այպն առնէին զնա եւ զի-
նուորքն, եկեալ առաջի մատուցա-
37 նէին նմա քացախ, Եւ ասէին, Եթէ
դու ես թագաւորն Հրէից, փրկեա
38 զանձն քո։ Եւ էր գիր գրեալ ի վերայ
նորա Յունարէն եւ Դաղմատերէն եւ
Եբրայեցերէն գրով թէ Սա է արքայն
Հրէից։

39 Իսկ մի ոմն ի կախելոց չարագոր-
ծացն հայհոյէր զնա եւ ասէր, [4]Ո՞չ
դու ես Քրիստոսն, փրկեա զանձն քո
40 եւ զմեզ։ Պատասխանի ետ ընկերն
սաստելով նմա եւ ասէ, Չերկնչի՞ս
դու յԱստուծոյ, զի ի նմին պատժի
41 կաս։ Եւ մեք յիրաւի, զի արժանի ո-
րոց գործեցաքն՝ առնումք զհատու-
ցումն. եւ սա ապիրատ ինչ ոչ գոր-
42 ծեաց։ Եւ ասէ ցՅիսուս, Յիշեա զիս,
Տէր, յորժամ գայցես արքայութեամբ
43 քով։ Եւ ասէ ցնա Յիսուս, Ամէն
ասեմ քեզ, Այսօր ընդ իս իցես ի
դրախտին։
44 Եւ էր իբրեւ վեցերորդ ժամ, եւ
խաւար եղեւ ի վերայ ամենայն երկրի
մինչեւ ցիններորդ ժամն. խաւարե-
45 ցաւ արեգակն։ Եւ հերձաւ վարագոյր
46 տաճարին ընդ մէջ։ Եւ կարդաց Յի-
սուս ի ձայն մեծ եւ ասէ, Հայր, ի
ձեռս քո աւանդեմ զհոգի իմ. զայս
իբրեւ ասաց, եհան զոգի։
47 Եւ տեսեալ հարիւրապետին զոր ինչ
եղեւն՝ փառաւոր արար զԱստուած եւ
ասէ, Արդարեւ այրս այս արդար էր։
48 Եւ ամենայն ժողովուրդքն որ եկեալ
էին, եւ տեսանէին զտեսիլն զայն եւ
զգործ, բախէին զկուրծս եւ դառնա-
49 յին։ Կային եւ ամենայն ծանօթքն նո-
րա ի հեռաստանէ, եւ կանայք որ ե-
կեալ էին զհետ նորա ի Գալիլեէ՝ տե-
սանէին զայն։
50 Եւ ահա այր մի անուն Յովսէփ,
որ էր նախարար, այր բարեգործ եւ
51 արդար, (Սա չէր միաբանեալ ընդ խոր-
հուրդս եւ ընդ գործս նոցա,) յԱրիմա-
թեայ քաղաքէ Հրէից, որ եւ ինքն
իսկ ակն ունէր արքայութեան Աստու-
52 ծոյ։ Սա մատուցեալ առ Պիղատոս՝
53 խնդրեաց զմարմինն Յիսուսի. Եւ ի-
ջուցեալ զնա՝ պատեաց պատանաւ
լաւ, եւ եդ ի կռածոյ գերեզմանի ուր
54 չէր բնաւ զոք եդեալ։ Եւ օրն էր
ուրբաթ եւ շաբաթ լուսանայր։
55 Եւ երթային զհետ նորա կանայք որ
եկեալ էին ընդ նմա ի Գալիլեէ, տեսին
զգերեզմանն, եւ որպէս եդաւ մար-
56 մին նորա։ Դարձան եւ պատրաստե-
ցին խունկս եւ եւղս եւ ի շաբաթուն
հանգարտեցին վասն պատուիրանին։

[1] ի բազումս պակասէ
[2] ի Յունարէն պակասէ
[3] Քրիստոս, ընտրեալն Աստուծոյ
[4] Յոմանս, Եթէ

## Գլ. ԻԴ

1 Բայց ի միաշաբաթուն վաղ քաջ ընդ
առաւօտն եկին ի գերեզմանն, բերին
զխունկսն զոր պատրաստեցին, եւ այլ
2 կանայք ընդ նոսա. Եւ գտին զվէմն
թաւալեցուցեալ ի գերեզմանէ անտի։
3 Եւ մտեալ ի ներքս ոչ գտին զմարմինն
4 Տեառն Յիսուսի։ Եւ եղեւ ընդ հիա-
նալն նոցա վասն այնորիկ, եւ ահա
արք երկու հասին առ նոսա ի հան-
5 դերձս լուսաւորս։ Եւ յերկեւ զահի
հարան եւ խոնարհեցուցին զերեսս
իւրեանց յերկիր, ասեն ցնոսա, Զի՞
6 խնդրէք զկենդանին ընդ մեռեալս. Չէ
աստ, այլ յարեաւ. յիշեցէք որպէս խօ-
սեցաւ ընդ ձեզ մինչ էրն ի Գալիլեա,
7 Եւ ասէր թէ Պարտ է Որդւոյ մարդոյ
մատնել ի ձեռս մարդոց մեղաւորաց,
եւ ի խաչ ելանել եւ յերրորդ աւուր
8 յառնել։ Եւ յիշեցին զբանսն նորա։
9 Եւ [1]դարձան պատմեցին զայս ամե-
նայն մետասանիցն եւ այլոցն ամենե-
10 ցուն։ Եւ էին Մարիամ Մագդաղե-
նացի եւ Յովհաննա եւ Մարիամ Յա-
կովբայ եւ այլք ընդ նոսա որ պատ-
11 մեցին զայս առաքելոցն։ Եւ երեւե-
ցան առաջի նոցա չափազանցութիւն
բանքն նոցա եւ չհաւատային նոցա։
12 Բայց Պետրոս յարուցեալ ընթացաւ
ի գերեզմանն, եւ հայեցեալ տեսանէ
զկտաւսն լոկ զի կային, եւ գնաց ընդ
միտս զարմացեալ թէ զինչ եղեւ։
13 Եւ ահա երկուք ի նոցանէ երթային
ի նմին աւուր ի գեղ մի որ հեռի էր
յԵրուսաղեմէ [2]հարիւր եւ վաթսուն"
ասպարիսաւ, եւ էր անուն նորա Եմ-
14 մաւուս։ Եւ նոքա խօսէին ընդ մի-
մեանս վասն ամենայն անցիցն անցե-
15 լոց։ Եւ եղեւ ընդ խօսելն նոցա եւ ընդ
վիճել, եւ ինքն իսկ Յիսուս մերձե-
16 ցաւ եւ երթայր ընդ նոսա։ Եւ նոցա
աչք կալեալ էին առ ի չճանաչելոյ զնա։
17 Եւ ասէ ցնոսա, Զի՞նչ են բանքդ վասն
որոյ վիճիքդ ընդ միմեանս մինչդեռ
18 գնայքդ, եւ տրտմեալ էք։ Պատաս-
խանի ետ մի ոմն ի նոցանէ որում ա-
նուն էր Կղէովպաս, եւ ասէ ցնա,
Դո՞ւ միայն կաս յԵրուսաղէմ, որ ոչ
գիտացեր զինչ գործեցաւ ի նմա յա-
19 ւուրսս յայսոսիկ։ Եւ ասէ ցնոսա, Զի՞նչ.
եւ նոքա ասեն, ԶՅիսուսէ Նազով-
րեցւոյ, որ եղեւ այր մարգարէ հզօր
արդեամբք եւ բանիւք առաջի Աստու-
20 ծոյ եւ ամենայն ժողովրդեանն։ Ո՛ր-
պէս մատնեցին զնա քահանայապետքն
եւ իշխանքն մեր ի դատաստան մա-
21 հու եւ հանին զնա ի խաչ։ Մեք ակն
ունէաք թէ նա իցէ որ փրկելոցն էր
զԻսրայէլ. այլ եւ հանդերձ այսու ա-
մենայնիւ այս երրորդ օր է յորմէ հե-
22 տէ այն գործեցաւ. Այլ եւ կանայք ո-
մանք ի մէնջ զարմացուցին զմեզ, որք
կանխեալ ընդ առաւօտն չոգան ի գե-
23 րեզմանն, Եւ ոչ գտին զմարմին նո-
րա. եկին եւ ասեն թէ եւ տեսիլ եւս
հրեշտակաց տեսին, որք ասէին զնմա-
24 նէ թէ կենդանի է։ Եւ գնացին ոմանք
ի մէնջ ի գերեզմանն, եւ գտին նոյն-
պէս որպէս եւ կանայքն ասացին. բայց
25 զնա ոչ տեսին։ Եւ նա ասէ ցնոսա,
Ո՛վ անմիտք եւ հեղգասիրտք ի հա-
ւատալ ամենայնի զոր խօսեցան մար-
26 գարէքն. Ո՞չ զնոյնս պարտ էր չար-
չարել Քրիստոսի, եւ մտանել ի փառս
27 իւր։ Եւ սկսեալ ի Մովսիսէ եւ յամե-
նայն մարգարէիցն՝ մեկնէր նոցա որ
ինչ յամենայն գիրս գրեալ էր զնմանէ։
28 Իբրեւ մերձեցան ի գեղն յոր երթա-
յին, եւ նա պատճառէր հեռագոյն եւս
29 ուրեք երթալ։ Եւ բռնադատեցին զնա
եւ ասեն, Առ մեզ ագիր, զի ընդ ե-
րեկս է եւ տարաժամեալ է օրս. եւ ե-
30 մուտ ագանել ընդ նոսա։ Եւ եղեւ
ի բազմելն նորա ընդ նոսա, առեալ
զհացն՝ օրհնեաց, եբեկ եւ ետ նոցա։
31 Եւ նոցա բացան աչք եւ ծանեան զնա,
32 եւ նա եղեւ ի նոցանէ աներեւոյթ։ Եւ
ասեն ցմիմեանս, Ո՞չ իսկ եւ սիրտք մեր
ճմլէին ի մեզ մինչ խօսէրն ընդ մեզ
զճանապարհայն, եւ ո՛րպէս բանայր
33 մեզ զգիրս. Եւ յարուցեալ նոյնժա-
մայն՝ դարձան յԵրուսաղէմ, եւ գտին
ժողովեալ զմետասանսն եւ զորս ընդ
34 նոսայն էին. Եւ ասեն թէ Արդարեւ
յարեաւ Տէր եւ երեւեցաւ Սիմովնի։
35 Եւ նոքա պատմեցին զայն որ զճանա-
պարհայնն, եւ թէ զիա՛րդ ետ ծանօթս
նոցա ի բեկանել հացին։
36 Մինչդեռ զայն խօսէին, ինքն իսկ
Յիսուս եկաց ի մէջ նոցա եւ ասէ ցնո-

---

[1] Բ—ղ—մ, դարձան ի գերեզմանէն
[2] Բ—ղ—մ, վաթսուն

նա, Խաղաղութիւն ընդ ձեզ, [1]ես եմ,
37 մի՛ երկնչիք։" Եւ զահի հարեալ եր-
կընչէին, եւ համարէին ոգի ինչ տե-
38 սանել։ Եւ ասէ ցնոսա, Զի՞ խռովեալ
էք, եւ ընդէ՞ր խորհուրդք ելանեն ի
39 սիրտս ձեր։ Տեսէք զձեռս իմ եւ զոտս,
զի ես նոյն եմ. շօշափեցէք զիս եւ
տեսէք, զի ոգի մարմին եւ ոսկերս ոչ
ունի, որպէս զիս տեսանէք զի ու-
40 նիմ։ Եւ զայս ասացեալ եցոյց նոցա
41 զձեռսն եւ զոտս։ Եւ մինչդեռ տա-
կաւին չհաւատային ի խնդութենէն եւ
զարմացեալ էին, ասէ ցնոսա, Ունի՞ք
42 ինչ կերակուր աստ։ Եւ նոքա ետուն
նմա ձկան խորովելոյ մասն [1]եւ խո-
43 րիսխ մեղու"։ Եւ առ եկեր առաջի
44 նոցա, [1]եւ զմնացորդսն ետ նոցա։" Եւ
ասէ ցնոսա, Այս բանք են զոր խօ-
սեցայ ընդ ձեզ, մինչ առ ձեզն էի թէ
Պարտ է լնուլ ամենայն գրելոցն յօ-
րէնսն Մովսիսի եւ ի մարգարէս եւ ի
45 սաղմոսս վասն իմ։ Յայնժամ եբաց
46 զմիտս նոցա իմանալ զգիրս։ Եւ ասէ
ցնոսա թէ [2]Այսպէս պարտ էր չար-
չարել Քրիստոսի, եւ յառնել ի մեռե-
47 լոց յաւուր երրորդի, Եւ քարոզել
յանուն նորա ապաշխարութիւն եւ
թողութիւն մեղաց յամենայն ազգս՝
48 սկսեալ յԵրուսաղեմէ։ Եւ դուք էք
49 վկայք այսոցիկ։ Եւ ահա ես առաքեմ
զաւետիս Հօր իմոյ ի ձեզ. եւ դուք
նստարուք ի քաղաքիս յԵրուսաղէմ,
մինչեւ զգենուցուք զօրութիւն ի
բարձանց։
50 Եհան զնոսա մինչեւ ի Բեթանիա,
եւ ամբարձեալ զձեռս իւր՝ օրհնեաց
51 զնոսա։ Եւ եղեւ յօրհնելն նորա զնո-
սա, մեկնեցաւ ի նոցանէ եւ վերա-
52 նայր յերկինս։ Եւ նոքա երկիր պա-
գեալ նմա՝ դարձան յԵրուսաղէմ ու-
53 րախութեամբ մեծաւ։ Եւ էին հանա-
պազ ի տաճարին, գովէին եւ օրհնէին
զԱստուած։

[1]Ի բազումս պակասի

[2]Յոյնն, Այսպէս գրեալ է, և այսպէս

# ԳԼՈՒԽՔ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ





# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ԳԼՈՒԽ Ա

1 ԲԿ. Ի ՍԿԶԲԱՆԷ էր Բանն, եւ
Բանն էր առ Աստուած, եւ Աստուած
2 էր Բանն։ Նա էր ի սկզբանէ առ Աս-
3 տուած։ Ամենայն ինչ նովաւ եղեւ,
եւ առանց նորա եղեւ եւ ոչ ինչ որ
4 ինչ եղեւն։ Նովաւ կեանք էր, եւ
5 կեանքն էր լոյս մարդկան. Եւ լոյսն ի
խաւարի անդ լուսաւորէ, եւ խաւար
նմա ոչ եղեւ հասու։
6 Եղեւ այր մի առաքեալ յԱստուծոյ,
7 անուն նմա Յովհաննէս։ Սա եկն ի
վկայութիւն զի վկայեսցէ վասն Լու-
սոյն, զի ամենեքին հաւատասցեն նո-
8 վաւ։ Ոչ էր նա Լոյսն, այլ զի վկա-
յեսցէ վասն Լուսոյն։
9 Էր Լոյսն ճշմարիտ, որ լուսաւոր
առնէ զամենայն մարդ [1]որ գալոց է"
10 յաշխարհ։ Յաշխարհի էր, եւ աշխարհ
նովաւ եղեւ, եւ աշխարհ զնա ոչ ծա-
11 նեաւ։ Յիւրսն եկն, եւ իւրքն զնա ոչ
12 ընկալան։ Իսկ որք ընկալանն զնա՝ ետ
նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ
լինել որոց հաւատասցեն յանուն նորա.
13 Որք ոչ յարենէ եւ ոչ ի կամաց մարմնոյ
եւ ոչ ի կամաց առն, այլ յԱստուծոյ
14 ծնան։ Եւ Բանն մարմին եղեւ եւ
բնակեաց ի մեզ, եւ տեսաք զփառս նո-
րա՝, զփառս իբրեւ զմիածնի առ ի Հօրէ,
լի շնորհօք եւ ճշմարտութեամբ։
15 Յովհաննէս վկայէ վասն նորա, ա-
ղաղակեաց եւ ասէ, Սա է զորմէ ա-
սէի, Որ զկնի իմ գալոցն էր՝ առաջի
16 իմ եղեւ, զի նախ քան զիս էր։ Զի
ի լրութենէ անտի նորա մեք ամենե-
քին առաք շնորհս փոխանակ շնորհաց։
17 Զի օրէնքն ի ձեռն Մովսիսի տուան,
շնորհքն եւ ճշմարտութիւն ի ձեռն
Յիսուսի Քրիստոսի եղեն։
18 ԲԲ. ԶԱստուած ոչ ոք ետես երբեք,
բայց միածինն Որդի որ է ի ծոց Հօր,

[1] Յոյնն, եկեալ

19 նա պատմեաց։ Եւ այս է վկայու-
թիւնն Յովհաննու, յորժամ առաքեցին
առ նա Հրեայքն յԵրուսաղեմէ քահա-
նայս եւ Ղեւտացիս, զի հարցցեն զնա
20 թէ Դու ո՞ ես։ Եւ խոստովան եղեւ
եւ ոչ ուրացաւ. խոստովան եղեւ եթէ
21 Ես ոչ եմ Քրիստոսն։ Եւ հարցին զնա,
Իսկ ո՞վ ես դու, Եղիա՞ ես. եւ ասէ,
Ոչ եմ։ Իսկ մարգարէ՞ն ես դու. պա-
22 տասխանի ետ թէ Ոչ։ Իսկ ասա մեզ,
Դու ո՞վ ես, զի պատասխանի տար-
ցուք որոց առաքեցինն զմեզ. զի՞ ասես
23 վասն քո։ Ասէ, Ես՝ ձայն բարբառոյ
յանապատի, Ուղիղ արարէք զճանա-
պարհն Տեառն, որպէս ասաց Եսայի
24 մարգարէ։ Եւ որք առաքեցանն՝ ի փա-
25 րիսեցւոց անտի էին։ Հարցին զնա եւ
ասեն, Իսկ զի՞ մկրտես, եթէ դու չես
Քրիստոսն, եւ ոչ Եղիա, եւ ոչ մարգա-
26 րէն։ Պատասխանի ետ նոցա Յովհան-
նէս եւ ասէ, Ես մկրտեմ զձեզ ջրով.
ի միջի ձերում կայ, զոր դուքն ոչ գի-
27 տէք. Որ զկնի իմ [2]գալոցն է", որում
չեմ արժանի եթէ լուծից զխրացս
28 կօշկաց նորա։ Այս ի Բեթաբրա եղեւ
յայնկոյս Յորդանանու, ուր էրն Յով-
հաննէս եւ մկրտէր։
29 ԲԳ. Ի վաղիւ անդր տեսանէ զՅի-
սուս զի գայր առ նա. եւ ասէ, Ահա-
ւասիկ Գառն Աստուծոյ որ բառնայ
30 զմեղս աշխարհի։ Սա է վասն որոյ եսն
ասէի, Զկնի իմ գայ այր որ առաջի
իմ եղեւ, զի յառաջ իսկ էր քան զիս։
31 Եւ ես ոչ գիտէի զնա, այլ զի յայտնի
լինիցի Իսրայէլի, վասն այնորիկ եկի
32 ես ջրով մկրտել։ Վկայեաց Յովհան-
նէս եւ ասէ թէ Տեսանէի զՀոգին,
զի իջանէր իբրեւ զաղաւնի յերկնից,
33 եւ հանգչէր ի վերայ նորա։ Եւ ես ոչ
գիտէի զնա, այլ որ առաքեացն զիս
մկրտել ջրով՝ նա ասաց ցիս, Յոր վե-
րայ տեսանիցես զՀոգին զի իջանիցէ

[2] Ոմանք, գալոցն է, որ առաջի իմ եղեւ

եւ հանգչիցի ի վերայ նորա, նա է որ
34 մկրտէ Հոգւովն Սրբով։ Եւ ես տեսի
եւ վկայեցի եթէ Սա է Որդին Աս-
տուծոյ։
35 ԲԴ. Ի վաղիւ անդր կայր Յովհան-
նէս, եւ յաշակերտաց անտի նորա եր-
36 կու։ Եւ նայեցեալ ընդ Յիսուս զի
զգնայր, ասէ, Ահաւասիկ [1]Քրիստոս
37 Գառն Աստուծոյ։ Լուան ի նմանէ եր-
կու աշակերտքն զի խօսէր, եւ գնա-
38 ցին զհետ Յիսուսի։ Իբրեւ դարձաւ
Յիսուս եւ ետես զնոսա զի երթային
զհետ նորա, ասէ ցնոսա, Զի՞նչ խնդ-
րէք. Նոքա ասեն ցնա, Ռաբբի, (որ
թարգմանեալ կոչի Վարդապետ,) ո՞ւր
39 ես օթեւանս քո։ Ասէ ցնոսա, Եկայք
եւ տեսէք։ Եկին եւ տեսին ուր էին
օթեւանք նորա, եւ առ նմա ագան
այն օր, զի ժամ էր իբրեւ տասնե-
40 րորդ։ Էր Անդրէաս եղբայր Սիմովնի
Վիմի, մի յերկուց անտի որ լուանն
ի Յովհաննէ եւ գնացին զկնի նորա։
41 Գտանէ սա նախ զեղբայր իւր զՍիմովն,
եւ ասէ ցնա, Գտաք զՄեսիայն (որ
42 թարգմանի Քրիստոս)։ Սա ած զնա
առ Յիսուս. հայեցեալ ընդ նա Յիսու-
սի՝ ասէ, Դու ես Սիմովն որդի Յովնա-
նու, դու կոչեսցիս Կեփաս (որ թարգ-
մանի Պետրոս)։
43 ԲԵ. Ի վաղիւ անդր կամեցաւ ելա-
նել ի Գալիլեա. գտանէ զՓիլիպպոս,
եւ ասէ ցնա Յիսուս, Եկ զկնի իմ։
44 Եւ էր Փիլիպպոս ի Բեթսայիդայ, ի քա-
45 ղաքէ Անդրեայ եւ Պետրոսի։ Գտանէ
Փիլիպպոս զՆաթանայէլ եւ ասէ ցնա,
Զորմէ գրեաց Մովսէս յօրէնսն՝ եւ
մարգարէքն, գտաք զՅիսուս զորդի
46 Յովսեփայ ի Նազարեթէ։ Ասէ ցնա Նա-
թանայէլ, Իսկ ի Նազարեթէ մա՞րթ
ինչ իցէ բարւոյ իմիք լինել. ասէ ցնա
47 Փիլիպպոս, Եկ եւ տես։ Իբրեւ ետես
Յիսուս զՆաթանայէլ զի գայր առ նա,
ասէ վասն նորա, Ահա արդարեւ Իս-
րայելացի յորում նենգութիւն ոչ գոյ։
48 Ասէ ցնա Նաթանայէլ, Ուստի՞ ճանա-
չես զիս. պատասխանի ետ Յիսուս եւ
ասէ ցնա, մինչչեւ էր Փիլիպպոսի կո-
չեցեալ զքեզ՝ զի էիր ի ներքոյ թզեն-
49 ւոյն, տեսի զքեզ։ Պատասխանի ետ
նմա Նաթանայէլ եւ ասէ, Ռաբբի,

[1] Ի բոլորս պակասէ

դու ես Որդի Աստուծոյ, դու ես թա-
50 գաւորն Իսրայելի։ Պատասխանի ետ
նմա Յիսուս եւ ասէ, Փոխանակ զի
ասացի քեզ թէ տեսի ի ներքոյ թզեն-
ւոյն, հաւատա՞ս. մեծամեծս եւս քան
51 զայս տեսցես։ Եւ ասէ ցնա, Ամէն
ամէն ասեմ ձեզ, Տեսանիցէք զերկինս
բացեալ, եւ զհրեշտակս Աստուծոյ զի
ելանիցեն եւ իջանիցեն ի վերայ Որդւոյ
մարդոյ։

## Գլ. Բ

1 ԲԶ. Եւ յաւուրն երրորդի հարսանիք
էին ի Կանա Գալիլեացւոց, եւ անդ էր
2 մայրն Յիսուսի։ Կոչեցաւ եւ Յիսուս
եւ աշակերտքն նորա ի հարսանիսն,
3 Եւ ի պակասել գինւոյն՝ ասէ մայրն
4 ցՅիսուս, Գինի ոչ ունին։ Եւ ասէ
ցնա Յիսուս, Զի՞ կայ իմ եւ քո, կին
5 դու, չեւ է հասեալ ժամանակ իմ։ Ասէ
մայրն նորա ցպաշտաւորսն, Որ զինչ
6 ասիցէ ձեզ՝ արասջիք։ Անդ էին թա-
կոյկք կճեայք վեց ըստ սրբութեանն
Հրէից, տանէին մի մի ի նոցանէ մարս
7 երկուս կամ երիս։ Ասէ ցնոսա Յի-
սուս, Լցէք զթակոյկսդ ջրով. եւ լցին
8 զնոսա մինչեւ ի վեր։ Եւ ասէ ցնոսա,
Արդ առէք եւ բերէք ճարտարապետիդ.
9 եւ նոքա բերին։ Եւ իբրեւ ճաշակեաց
ճարտարապետն զջուրն գինի եղեալ, եւ
ոչ գիտէր ուստի իցէ. բայց սպասա-
ւորքն գիտէին որք արկին զջուրն.
10 խօսի ընդ փեսային ճարտարապետն, Եւ
ասէ, Ամենայն մարդ զանոյշ գինին
յառաջագոյն պաշտէ. եւ յորժամ ար-
բենան, յայնժամ զյոռին. դու պահե-
11 ցեր զանոյշ գինիդ մինչեւ ցայժմ։ Զայս
արար սկիզբն նշանաց Յիսուս ի Կանա
Գալիլեացւոց, եւ յայտնեաց զփառս
իւր, եւ հաւատացին ի նա աշակերտքն
նորա։
12 ԲԷ. Յետ այսորիկ էջ ի Կափառնա-
յում, ինքն եւ մայր իւր եւ եղբարք
իւր[2]. եւ անդ լինէր ոչ բազում ինչ
աւուրս։
13 Եւ էր մերձ զատիկն Հրէից, եւ ել
14 Յիսուս յԵրուսաղէմ. Եւ եգիտ ի տա-
ճարին զի վաճառէին զարջառս եւ զոչ-
խարս եւ զաղաւնիս, եւ զլումայա-
15 փոխսն որ նստէին։ Եւ արար խարա-

[2] Բոլորք յաւելուն՝ և աշակերտք իւր

զան չուանեայ, եւ եհան զամենեսին
ի տաճարէն՝ զոչխարսն եւ զարջառս,
եւ զպղինձս հատավաճառացն ցրուեաց,
16 եւ զսեղանսն կործանեաց։ Եւ որ զա-
ղաւնիսն վաճառէին՝ ասէ ցնոսա, Ասէք
զայդ աստի, եւ մի՛ առնէք զտուն Հօր
17 իմոյ տուն վաճառի։ Ապա յիշեցին ա-
շակերտքն նորա թէ գրեալ է, Նախանձ
տան քո կերիցէ զիս։
18 Պատասխանի ետուն Հրեայքն եւ
ասեն ցնա, Զի՞նչ նշան ցուցանես դու
19 մեզ զի զայդ առնես։ Պատասխանի
ետ Յիսուս եւ ասէ ցնոսա, Քակեցէք
զտաճարդ զայդ, եւ զերիս աւուրս
20 կանգնեցից զդա։ Ասեն ցնա Հրեայքն,
Զքառասուն եւ զվեց ամ շինեցաւ
տաճարս այս, եւ դու զերիս աւուրս
21 կանգնեսցե՞ս զսա։ Բայց նա ասէր վասն
22 տաճարի մարմնոյ իւրոյ։ Իսկ յորժամ
յարեաւ ի մեռելոց, յիշեցին աշա-
կերտքն նորա, թէ այս է զոր ասացն,
եւ հաւատացին գրոյն եւ բանին զոր
ասաց Յիսուս։
23 ԳԿ. Եւ իբրեւ էր յԵրուսաղէմ ի
զատկին ի տօնի, բազումք հաւատացին
յանուն նորա, զի տեսանէին զնշանսն
24 զոր առնէր։ Բայց ինքն Յիսուս ոչ
հաւատայր զանձն նոցա, քանզի ինքն
25 գիտէր զամենայն. Եւ զի ոչ էր պիտոյ
եթէ ոք վկայեսցէ վասն մարդոյ, զի
ինքն իսկ գիտէր զինչ կայր ի մարդն։

ԳԼ. Գ

1 Եւ էր այր մի ի փարիսեցւոց անտի Նի-
կոդեմոս անուն նորա, իշխան Հրէից։
2 Սա եկն առ նա գիշերի եւ ասէ ցնա,
Ռաբբի, գիտեմք եթէ յԱստուծոյ եկեալ
ես վարդապետ. զի ոչ ոք կարէ զայդ
նշանս առնել զոր դուդ առնես, եթէ
3 ոչ Աստուած իցէ ընդ նմա։ Պատաս-
խանի ետ Յիսուս եւ ասէ ցնա, Ամէն
ամէն ասեմ քեզ, Եթէ ոչ ոք ծնցի
վերստին, ոչ կարէ տեսանել զարքա-
4 յութիւն Աստուծոյ։ Ասէ ցնա Նիկո-
դեմոս, Զիա՞րդ կարէ մարդ ծնանել
որ ծերն իցէ. միթէ մա՞րթ ինչ իցէ
անդրէն յորովայն մօր իւրոյ կրկին
5 մտանել եւ ծնանել։ Պատասխանի ետ
Յիսուս եւ ասէ, Ամէն ամէն ասեմ
քեզ, Եթէ ոչ ոք ծնցի ի ջրոյ եւ ի
Հոգւոյ, ոչ կարէ մտանել յարքայու-
6 թիւն Աստուծոյ։ Զի ծնեալն ի մարմնոյ
մարմին է, եւ ծնեալն ի Հոգւոյ հոգի
7 է։ Դու մի՛ զարմանար թէ ասացի
քեզ, Պարտ է ձեզ ծնանել վերստին։
8 Զի հողմ ուր կամի շնչէ, եւ զձայն
նորա լսես, այլ ոչ գիտես ուստի գայ
կամ յո երթայ. սոյնպէս եւ ամենայն
9 ծնեալն ի Հոգւոյն։ Պատասխանի ետ
Նիկոդեմոս եւ ասէ ցնա, Զիա՞րդ մար-
10 թի այդմ լինել։ Պատասխանի ետ Յի-
սուս եւ ասէ ցնա, Դու ես վարդա-
պետ Իսրայելի եւ զայդ ո՞չ գիտես։
11 Ամէն ամէն ասեմ քեզ, զի զոր ինչ գի-
տեմք՝ խօսիմք, եւ զոր տեսաք՝ վկա-
յեմք, եւ զվկայութիւն մեր ոչ ընդու-
12 նիք։ Իսկ արդ՝ եթէ զերկրաւորս ասա-
ցի ձեզ եւ ոչ հաւատայք, զիա՞րդ եթէ
զերկնաւորսն ասացից, հաւատայցէք։
13 ԳԲ. Եւ ոչ ոք ել յերկինս, եթէ ոչ
որ էջն յերկնից՝ Որդին մարդոյ, որ էն
14 յերկինս։ Եւ որպէս Մովսէս բարձրա-
ցոյց զօձն յանապատին, նոյնպէս բարձ-
15 րանալ պարտ է Որդւոյ մարդոյ։ Զի
ամենայն որ հաւատայ [1] ի նա՝ ընկալցի
16 զկեանսն յաւիտենականս։ Զի այնպէս
սիրեաց Աստուած զաշխարհ, մինչեւ
զՈրդին իւր միածին ետ. զի ամենայն
որ հաւատայ ի նա՝ մի՛ կորիցէ, այլ
17 ընկալցի զկեանսն յաւիտենականս։ Զի
ոչ առաքեաց Աստուած զՈրդի իւր
յաշխարհ թէ դատեսցի զաշխարհ, այլ
18 զի փրկեսցի աշխարհ նովաւ։ Որ հա-
ւատայ ի նա՝ ոչ դատապարտեսցի. եւ
որ ոչ հաւատայ ի նա՝ արդէն իսկ դա-
տապարտեալ է, զի ոչ հաւատաց յա-
19 նուն միածնի Որդւոյն Աստուծոյ։ Եւ
այս իսկ է դատաստան, զի լոյս եկն
յաշխարհ, եւ սիրեցին մարդիկ զխաւար
առաւել քան զլոյս, զի էին գործք իւր-
20 եանց չարութեան։ Զի ամենայն որ
զչար գործէ՝ ատեայ զլոյս, եւ ոչ գայ
առ լոյսն, զի մի՛ յանդիմանեսցին գործք
21 նորա։ Իսկ որ առնէ զճշմարտութիւն՝
գայ առ լոյսն, զի յայտնի լիցին գործք
նորա թէ Աստուծով գործեցան։
22 ԳԳ. Յետ այսորիկ եկն Յիսուս եւ
աշակերտք նորա յերկիրն Հրէաստա-
նի, եւ անդ շրջէր նոքօք հանդերձ եւ
23 մկրտէր։ Մկրտէր եւ Յովհաննէս ի
յԱյենովն մերձ առ Սաղիմ, զի ջուրք

[1] Ոմնք, ի նա՝ մի՛ կորիցէ, այլ

բազումք էին անդ · և գային և
24 մկրտէին · Զի չև ևս էր արկեալ
զՅովհաննէս ի բանտ ։
25 Եւ եղև խնդիր յաշակերտացն Յով-
հաննու ընդ [1]Հրէի վասն սրբութեան ։
26 Եկին առ Յովհաննէս և ասեն ցնա,
Ռաբբի, որ էրն ընդ քեզ յայնկոյս Յոր-
դանանու, որում դուն վկայեցեր, ա-
հաւանիկ նա մկրտէ, և ամենեքին
27 գան առ նա ։ Պատասխանի ետ Յով-
հաննէս և ասէ, Ոչ կարէ մարդ առ-
նուլ յանձնէ և ոչ ինչ, եթէ ոչ իցէ
28 տուեալ յերկնից [2]ի վերուստ ։ Դուք
ձեզէն վկայէք ինձ, զի ասացի ձեզ թէ
Չեմ ես Քրիստոսն, այլ թէ առաքեալ
29 եմ առաջի նորա ։ Որ ունի զհարսն՝ նա
է փեսայ · իսկ բարեկամ փեսային որ
կայ և լսէ նմա՝ ուրախութեամբ ու-
րախ լինի վասն ձայնի փեսային · արդ
այս ուրախութիւն որ իմս է՝ լցեալ է ։
30 Նմա պարտ է աճել և ինձ մեղմանալ ։
31 Որ ի վերուստն գայ՝ ի վերոյ է քան
զամենայն · որ յերկրէ աստի է՝ յերկրէ
32 է և յերկրէ խօսի ։ Որ յերկնիցն [3]գայ՝
զոր" ինչ ետես և զոր լուաւ՝ վկայէ,
և զվկայութիւն նորա ոչ ոք ընդու-
33 նի ։ Որ ընդունի զվկայութիւն նորա՝
34 կնքեաց թէ Աստուած ճշմարիտ է ։ Զի
զոր Աստուածն առաքեաց՝ զբանս Աս-
տուծոյ խօսի · զի ոչ եթէ չափով տայ
35 Աստուած զՀոգին ։ Հայր սիրէ զՈրդի,
և զամենայն ինչ ետ ի ձեռս նորա ։
36 Որ հաւատայ յՈրդի՝ ընդունի զկեանսն
յաւիտենականս · և որ ոչ հնազանդի
Որդւոյ՝ ոչ տեսցէ զկեանս, այլ բար-
կութիւն Աստուծոյ մնայ ի վերայ
նորա ։

## ԳԼ · Դ

1 Գ.Դ. **Ի**բրև գիտաց [4]Յիսուս եթէ լուան
փարիսեցիքն եթէ Յիսուս բազում ա-
շակերտս առնէ և մկրտէ քան զՅով-
2 հաննէս, ([5]Քանզի ոչ եթէ Յիսուս
ինքնին մկրտէր, այլ աշակերտքն նո-
3 րա,) Եթող զՀրէաստան երկիր, և
4 եկն միւսանգամ ի Գալիլեա ։ Եւ էր
5 նմա անցանել ընդ Սամարիա ։ Գայ նա

[1] Ոմանք, Հրէից
[2] Ի բազումս պակասէ
[3] Բազումք, գայ՝ ի վերոյ է քան զամենայն, և զոր
[4] Բազումք, Տէր
[5] Ցոյնն, Թէպէտ և

ի քաղաք մի Սամարացւոց որում ա-
նուն էր Սիւքար, մերձ ի գեղն զոր ետ
Յակովբ որդւոյ իւրում Յովսեփայ ։
6 Եւ անդ էր աղբիւր մի Յակովբայ · և
Յիսուս վաստակեալ ի ճանապարհէն՝
նստէր ի վերայ աղբերն, և էր ժամ
իբրև վեցերորդ ։
7 Գայ կին մի ի Սամարիայ հանել ջուր ·
ասէ ցնա Յիսուս, Տուր ինձ ըմպել ։
8 Զի աշակերտքն նորա երթեալ էին ի
քաղաք անդր զի կերակուրս գնեսցեն ։
9 Ասէ ցնա կինն Սամարացի, Դու որ
Հրեայդ ես, զիա՞րդ յինէն ըմպել խնդ-
րես ի կնոջէ Սամարացւոյ · զի ոչ եր-
բեք խառնակին Հրեայք ընդ Սամա-
10 րացիս ։ Պատասխանի ետ նմա Յիսուս
և ասէ, Եթէ գիտէիր դու [6]զպարգևսն
Աստուծոյ, և ո՛վ է որ ասէդ ցքեզ թէ
Տուր ինձ ըմպել, դու արդեւք խնդ-
րէիր ի նմանէ, և տայր քեզ ջուր
11 կենդանի ։ Ասէ ցնա կինն, Տէր, դու
քանզի և դոյլ իսկ ոչ ունիս, և ջր-
հորս խոր է, իսկ արդ ուստի՞ ունիցիս
12 զջուրն կենդանի ։ Միթէ դու մե՞ծ ինչ
ոք իցես քան զհայրն մեր Յակովբ որ
զայս ջրհոր ետ մեզ · և ինքն աստի
արբ և որդիք նորա և խաշինք նո-
13 րա ։ Պատասխանի ետ նմա Յիսուս և
ասէ, Ամենայն որ ըմպէ ի ջրոյ յայդ-
մանէ՝ միւսանգամ ծարաւէ, բայց որ
ըմպէ ի ջրոյն զոր ես տաց նմա՝ մի՛
14 ծարաւեսցէ յաւիտեան ։ Այլ ջուրն զոր
ես տաց նմա՝ եղիցի նմա աղբեր ջրոյ
15 բղխելոյ ի կեանսն յաւիտենականս ։ Ասէ
ցնա կինն, Տէր, տուր ինձ զջուրն
զայն, զի մի՛ ծարաւեցից, և մի՛ եկից
16 այսր հանել ջուր ։ Ասէ ցնա Յիսուս,
17 Երթ կոչեա զայր քո և եկ այսր ։ Պա-
տասխանի ետ նմա կինն և ասէ, Չիք
իմ այր · ասէ ցնա Յիսուս, Բարւոք
18 ասացեր թէ Չիք իմ այր · Զի հինգ
այր փոխեալ է քո, և զոր այժմն ու-
նիս՝ չէ քո այր · զայդ արդար ասացեր ։
19 Ասէ ցնա կինն, Տէր, թուի ինձ թէ
20 մարգարէ իցես դու ։ Հարքն մեր ի լե-
րինս յայսմիկ երկիր պագին, և դուք
ասէք թէ յԵրուսաղէմ եւեթ է տեղի,
21 ուր արժան իցէ երկիր պագանել ։ Ասէ
ցնա Յիսուս, Կին դու, հաւատա ինձ,
զի եկեսցէ ժամանակ, յորժամ ոչ ի լե-

[6] Ցոյնն, զպարգևն

րինս յայսմիկ եւ ոչ յԵրուսաղէմ եր-
22 կիր պագանիցեն Հօր։ Դուք երկիր
պագանէք որում ոչն գիտէք, մեք եր-
կիր պագանեմք որում գիտեմքն. զի
23 փրկութիւն ի Հրէից է։ Այլ եկեսցէ
ժամանակ եւ այժմ իսկ է, յորժամ
ճշմարիտքն երկրպագուք երկիր պա-
գանիցեն Հօր հոգւով եւ ճշմարտու-
թեամբ, քանզի եւ Հայր այնպիսի
երկրպագուս իւր խնդրէ։
24 ԳԵ. Հոգի է Աստուած, եւ երկրպա-
գուացն նորա հոգւով եւ ճշմարտու-
25 թեամբ պարտ է երկիր պագանել։ Ասէ
ցնա կինն, Գիտեմ զի Մեսիա գայ (ան-
ուանեալն Քրիստոս), յորժամ եկես-
ցէ նա, պատմեսցէ մեզ զամենայն։
26 Ասէ ցնա Յիսուս, Ես եմ որ խօսիմս
27 ընդ քեզ։ Եւ յայն բան եկին աշա-
կերտքն նորա, եւ զարմանային զի
ընդ կնոջն խօսէր. բայց ոչ ոք ասաց
ի նոցանէ թէ Զի՞նչ խնդրես, կամ
28 Զի՞նչ խօսիս ընդ դմա։ Եթող կինն
զսափորն իւր եւ չոգաւ ի քաղաքն,
29 եւ ասէ ցմարդիկն, Եկայք տեսէք
զայր մի որ ասաց ինձ զամենայն որ
ինչ իմ գործեալ է. միթէ նա՞ իցէ
30 Քրիստոսն։ Ելին ի քաղաքէն եւ գային
առ նա։
31 Եւ մինչեւ եկեալ էին նոքա, աղա-
չէին զնա աշակերտքն եւ ասէին, Ռաբ-
32 բի, հաց կեր։ Նա ասէ ցնոսա, Ես կե-
րակուր ունիմ ուտել, զոր դուքն ոչ
33 գիտէք։ Ասէին աշակերտքն ընդ մի-
մեանս, Միթէ եբե՞ր ինչ ոք դմա ուտել
34 Ասէ ցնոսա Յիսուս, Իմ կերակուր
այն է՝ զի արարից զկամս այնորիկ որ
առաքեացն զիս, եւ կատարեցից զգործն
35 նորա։ Ո՞չ դուք ասէք եթէ Այլ եւս
չորք ամիսք են, եւ հունձք գան. ահա-
ւասիկ ես ասեմ ձեզ, Ամբարձէք զաչս
ձեր եւ տեսէք զարտորայսն, զի սպի-
տակացեալ են եւ ի հունձս հասեալ։
36 Եւ որ հնձէն՝ վարձս առնու, եւ ժո-
ղովէ զպտուղ ի կեանսն յաւիտենա-
կանս. զի որ սերմանէն եւ որ հնձէ՝
37 հասարակ ցնծասցեն։ Յայսմ իսկ է
բանն ճշմարիտ, զի Այլ է որ սերմանէ
38 եւ այլ է որ հնձէ։ Ես առաքեցի զձեզ
հնձել զոր ոչ դուք վաստակեցէք. այլք
վաստակեցին եւ դուք ի վաստակս նո-
ցա մտէք։
39 Եւ ի քաղաքէն յայնմանէ Սամարաց-
ւոց բազումք հաւատացին ի նա վասն
բանի կնոջն վկայելոյ, եթէ Ասաց ինձ
զամենայն որ ինչ իմ գործեալ էր։
40 Իսկ իբրեւ եկին առ նա Սամարացիքն,
աղաչէին զնա լինել առ նոսա. եւ
41 եղեւ անդ աւուրս երկուս։ Եւ եւս
բազումք հաւատացին ի նա վասն բա-
42 նին նորա։ Եւ ասէին ցկինն թէ Ոչ
այսուհետեւ վասն քո խօսիցդ հաւա-
տամք, զի մեզէն իսկ լուաք ի դմանէ,
եւ գիտեմք եթէ դա է ճշմարտիւ Փրկիչ
[1]աշխարհի։
43 ԳԶ. Եւ յետ երկուց աւուրց ել ան-
44 տի եւ գնաց ի Գալիլեա։ Զի ինքն իսկ
Յիսուս վկայեաց եթէ Մարգարէ յիւ-
45 րում գաւառի պատիւ ոչ ունի։ Այլ
յորժամ եկն նա ի Գալիլեա, ընկալան
զնա Գալիլեացիքն. զի տեսեալ եւս էր
զամենայն նշանսն զոր արար յԵրու-
սաղէմ ի տօնին. քանզի եւ նոքա եկ-
եալ էին ի տօնն։
46 Եկն [2]դարձեալ ի Կանա Գալիլեացւոց
ուր արար զջուրն գինի. եւ անդ էր
թագաւորազն մի, որոյ որդի նորա
47 հիւանդ կայր ի Կափառնայում։ Նա
իբրեւ լուաւ եթէ Յիսուս եկեալ է ի
Հրէաստանէ ի Գալիլեա, եկն առ նա
եւ աղաչէր զի իջցէ եւ բժշկեսցէ զոր-
դի նորա, քանզի մերձ էր ի մեռանել։
48 Ասէ ցնա Յիսուս, Եթէ ոչ նշանս ինչ
եւ արուեստս տեսանէք, ոչ հաւա-
49 տայք։ Ասէ ցնա թագաւորազնն, Տէր,
էջ, մինչեւ մեռեալ իցէ մանուկն իմ։
50 Ասէ ցնա Յիսուս, Երթ, որդին քո
կենդանի է. եւ հաւատաց այրն բանին
51 զոր ասաց նմա Յիսուս, եւ գնայր։ Եւ
մինչդեռ իջանէր, ընդ առաջ եղեն նմա
ծառայքն նորա, աւետիս ետուն եւ
ասեն թէ մանուկն նորա կենդանի է։
52 Հարցանէր ցնոսա վասն ժամուն յո-
րում ապաքինեաց. եւ ասեն ցնա,
Երէկ յեւթներորդ ժամու եթող զնա
53 ջերմն։ Գիտաց հայրն նորա եթէ յայնմ
ժամու յորում ասացն ցնա Յիսուս թէ
Որդին քո կենդանի է. եւ հաւատաց
54 ինքն եւ ամենայն տուն իւր։ Զայս
դարձեալ երկրորդ նշան արար Յիսուս՝
եկեալ ի Հրէաստանէ ի Գալիլեա։

---

[1]Յոյն, աշխարհի, ոմանք, աշխարհի՝ Քրիստոս
[2]Ոմանք, դարձեալ Յիսուս

## Գլ. Ե

1 Գէ. Յետ այսորիկ տօն էր Հրէից, եւ
2 ել Յիսուս յԵրուսաղէմ։ Եւ [1]էր յԵ-
րուսաղէմ ի Պրոբատիկէ [2]աւազանին,
որ կոչէր Եբրայեցերէն Բեթհեզդա,
3 [3]հինգ սրահ։ Յորս անկեալ դնէր բազ-
մութիւն յոյժ հիւանդաց՝ կուրաց, կա-
ղաց, գօսացելոց, [4]որ ակն ունէին
4 ջրոցն յուզելոյ։ Եւ հրեշտակ Տեառն
ըստ ժամանակի իջանէր յաւազանն եւ
յուզէր զջուրսն եւ որ նախ ի շար-
ժումն ջուրցն իջանէր, բժշկէր՝ ոչ ու-
5 նելով նշան հիւանդութեանն՚՚ Եւ անդ
էր այր մի, որոյ երեսուն եւ ութ ամ
6 էր ի հիւանդութեան իւրում։ Զնա
իբրեւ ետես Յիսուս զի անկեալ դնէր,
եւ գիտաց թէ բազում ժամանակք են
այնուհետեւ, ասէ ցնա, Կամի՞ս ողջ
7 լինել։ Պատասխանի ետ նմա հիւանդն,
Տէր, ոչ զոք ունիմ, թէ յորժամ ջուրքն
յուզիցին, արկցէ զիս յաւազանն. եւ
[5]մինչ ես գանգաղիմ՚՚, այլ ոք քան զիս
8 յառաջագոյն իջանէ։ Ասէ ցնա Յիսուս,
9 Արի առ զմահիճս քո եւ գնա։ Եւ [6]ող-
ջացաւ այրն, եւ [7]յարեաւ առ զմահիճս
իւր եւ շրջէր. եւ էր շաբաթ յաւուրն
10 յայնմիկ։ Ասեն Հրեայքն ցբժշկեալն,
Շաբաթ է եւ ոչ է արժան առնուլ քեզ
11 զմահիճս քո։ Պատասխանի ետ նոցա
եւ ասէ, Որ բժշկեացն զիս, նա ասաց
12 ցիս, Առ զմահիճս քո եւ գնա։ Հարցին
ցնա եւ ասեն, Ո՞վ է այրն որ ասաց
13 ցքեզ, Առ զմահիճս քո եւ շրջեաց։ Եւ
բժշկեալն ոչ գիտէր թէ ով իցէ. քանզի
Յիսուս խոյս ետ վասն ամբոխին ի
14 տեղւոջէ անտի։ Յետ այսորիկ գտանէ
զնա Յիսուս ի տաճարին, եւ ասէ ցնա,
Ահաւադիկ ողջացար, մի՛ եւս մեղան-
չեր, զի մի՛ չար եւս ինչ լինիցի քեզ։
15 Գնաց այրն եւ պատմեաց Հրէիցն, եթէ
Յիսուս էր որ բժշկեացն զիս։
16 Եւ վասն այնորիկ հալածէին զՅի-
սուս Հրեայք[8], զի զայն առնէր ի շա-
17 բաթու։ Եւ Յիսուս պատասխանի ետ
նոցա, Հայր իմ մինչեւ ցայժմ գործէ
18 եւ ես գործեմ։ Վասն այնորիկ առա-
ւել խնդրէին Հրեայքն սպանանել զնա,
զի ոչ միայն լուծանէր զշաբաթս, այլ
եւ Հայր իւր կոչէր զԱստուած, եւ
հաւասար առնէր զանձն Աստուծոյ։
19 Դկ. Պատասխանի ետ Յիսուս եւ
ասէ ցնոսա, Ամէն ամէն ասեմ ձեզ,
Ոչ կարէ Որդի [7]մարդոյ առնել յանձնէ
եւ ոչ ինչ, եթէ ոչ տեսանիցէ զՀայրն
զի առնէ. զի զոր նայն առնէ, զնոյն
20 եւ Որդին նմին նման գործէ։ Զի Հայր
սիրէ զՈրդի, եւ զամենայն ինչ ցու-
ցանէ նմա զոր ինքն առնէ. եւ մեծա-
մեծս եւս քան զսոյնս ցուցանէ նմա
զգործս, ընդ որ դուք զարմանայք։
21 Զի որպէս Հայր յարուցանէ զմեռեալս
եւ կենդանի առնէ, նոյնպէս եւ Որդի
22 զորս կամի՝ կենդանի առնէ։ [9]Եւ ոչ
եթէ Հայր դատի զոք, այլ զամենայն
23 դատաստան ետ Որդւոյ [10]իւրոյ. Զի
ամենեքեան պատուեսցեն զՈրդի, որ-
պէս պատուեն զՀայրն. որ ոչ պատուէ
զՈրդին, ոչ պատուէ զՀայր, զառա-
24 քիչն նորա։ Ամէն ամէն ասեմ ձեզ,
զի Որ զբանն իմ լսէ եւ հաւատայ այնմ
որ առաքեացն զիս՝ ընդունի զկեանսն
յաւիտենականս. եւ ի դատաստան ոչ
մտանէ, այլ փոխեցաւ ի մահուանէ ի
25 կեանս։ Ամէն ամէն ասեմ ձեզ, զի Գայ
ժամանակ եւ արդէն իսկ է, յորժամ
մեռեալք լուիցեն ձայնի Որդւոյն Ա-
26 տուծոյ. եւ որք լուիցենն՝ կեցցեն։ Զի
որպէս Հայր ունի կեանս յանձին իւ-
րում, նոյնպէս ետ եւ Որդւոյ ունել
27 կեանս յանձին իւրում. Եւ իշխանու-
թիւն ետ նմա դատաստան առնել, եւ
28 զի Որդի մարդոյ է։ Ընդ այն [11]զի՞ զար-
մանայք, զի եկեսցէ ժամանակ յորում
ամենեքին որ ի գերեզմանս կայցեն՝
29 լուիցեն ձայնի նորա, Եւ ելցեն ար-
տաքս. որոց զբարիս գործեալ իցէ՝ ի
յարութիւն կենաց. եւ որոց զչար ա-
րարեալ՝ ի յարութիւն դատաստանաց։
30 Ոչ կարեմ ես յանձնէ առնել եւ ոչ ինչ.

[1] Յոյնն, է
[2] Յոյնն, աւազան
[3] Յոյնն, որ ունի հինգ
[4] Ի Բացուածս է Յունարէն օրինակաց, որպէս է Բա-
ցուածս է Հայերէն ձեռագրաց, պակասէ այս հատուած
[5] Յոյնն, մինչեւ ես գամ
[6] Բացուածս, առժամայն ողջացաւ
[7] Ի Բացուածս պակասէ

[8] Ոմանք յաւելուն, և խնդրէին սպանանել զնա
[9] Յոյնն, Զի
[10] Ի Յոյնն պակասէ
[11] Յոյնն, մի՛

այլ որպէս լսեմ, դատիմ, եւ դատաս-
տանն իմ արդար է. զի ոչ խնդրեմ
զկամս իմ, այլ զկամս այնորիկ որ ա-
ռաքեացն զիս։
31 ԴԲ. Եթէ ես վկայեմ վասն իմ, վկա-
32 յութիւն իմ չէ ճշմարիտ։ Այլ է որ
վկայէ վասն իմ. եւ [1]դուք գիտէք՝ եթէ
ճշմարիտ է վկայութիւնն զոր վկայեաց
33 վասն իմ։ Դուք առաքեցէք առ Յով-
հաննէս եւ վկայեաց ճշմարտութեանն։
34 Այլ ես ոչ եթէ ի մարդկանէ առնում
վկայութիւն, այլ զայս ասեմ զի դուք
35 ապրեսջիք։ Նա էր ճրագն որ լուցեալ
էր եւ ծագէր, եւ դուք կամեցարուք
ցնծալ առ ժամանակ մի ի լոյս նորա։
36 Այլ ես ունիմ վկայութիւն մեծ եւս
քան զՅովհաննու. զգործսն զորս ետ
ցիս Հայր զի կատարեցից զնոսա, նո-
քին իսկ գործքն զոր գործեմ՝ վկայեն
վասն իմ, եթէ Հայր առաքեաց զիս։
37 Եւ որ առաքեացն զիս Հայր՝ նա վկայ-
եաց վասն իմ. դուք ոչ զձայն նորա
երբեք լուարուք, եւ ոչ զտեսիլ նորա
38 տեսէք. Եւ ոչ զբանն նորա ունիք ի ձեզ
բնակեալ, զի զոր նա առաքեաց՝ դուք
39 նմա ոչ հաւատայք։ Քննեցէք զգիրս, զի
դուք համարիք նոքօք ունել զկեանսն
յաւիտենականս. եւ նոքին իսկ են որ
վկայեն վասն իմ, [2]որովք համարիքն
40 ունել կեանս՝ Եւ դուք ոչ կամիք գալ
41 առ իս զի զկեանսն ունիցիք։ Ես փառս
42 ի մարդկանէ ոչ առնում։ Այլ գիտեմ
զձեզ թէ զսէրն Աստուծոյ ոչ ունիք
43 յանձինս։ Ես եկի յանուն Հօր իմոյ,
եւ ոչ ընդունիք զիս. եթէ այլ ոք ե-
կեսցէ յիւր անուն, զնա ընդունիցիք։
44 Զիա՞րդ կարէք դուք հաւատալ, զի
փառս ի միմեանց առնուք, եւ զփառս
զառ ի միոյն Աստուծոյ ոչ խնդրէք։
45 Մի՛ համարիք եթէ ես չարախօս լինիչ
լիցիմ զձէնջ առ Հօր. գոյ որ չարախօս
կայ զձէնջ, Մովսէս, յոր դուքն յու-
46 սացեալ էք։ Զի եթէ հաւատայիք դուք
Մովսիսի, հաւատայիք արդեւք եւ
47 ինձ, զի նա վասն իմ իսկ գրեաց։ Զի
եթէ նորա գրոցն ոչ հաւատայք, զիա՞րդ
իմոց բանիցս հաւատայցէք։

ԳԼ. Զ

1 ԴԳ. Յետ այսորիկ գնաց Յիսուս յայն-
կոյս ծովուն Գալիլեացւոց Տիբերեայ.
2 Եւ զհետ երթայր նորա ժողովուրդ
բազում, զի տեսանէին զնշանսն զոր
3 առնէր ի վերայ հիւանդաց։ Ել ի լեառն
Յիսուս, եւ անդ նստէր աշակերտօքն
4 հանդերձ։ Եւ էր մերձ զատիկ տօնն
Հրէից։
5 Բարձ ի վեր զաչս իւր Յիսուս եւ
ետես, զի ժողովուրդ բազում գայր առ
նա, ասէ ցՓիլիպպոս, Ուստի՞ գնես-
6 ցուք հաց զի կերիցեն դոքա։ (Զայս
ասէր փորձելով զնա, այլ ինքն գիտէր
7 զինչ առնելոցն էր։) Պատասխանի ետ
նմա Փիլիպպոս, Երկերիւր դահեկանի
հաց չէ դոցա բաւական, թէպէտ եւ
իւրաքանչիւր ոք սակաւ ինչ առնու-
8 ցու։ Ասէ ցնա մի յաշակերտացն նո-
րա, Անդրէաս, եղբայր Սիմովնի Վիմի,
9 Է աստ պատանեակ մի, որ ունի հինգ
նկանակ գարեղէն եւ երկուս ձկունս,
այլ այն զի՞նչ է առ այդչափ մարդիկդ։
10 Ասէ Յիսուս, Բազմեցուցէք զմարդիկդ.
եւ էր խոտ յոյժ ի տեղւոջն. եւ բազ-
մեցան մարդիկն թուով իբրեւ հինգ
11 հազար։ Եւ առ զհացն Յիսուս, եւ գո-
հացաւ եւ բաշխեաց [3]բազմականացն.
նոյնպէս եւ ի ձկանցն որչափ եւ կա-
12 մեցան։ Եւ իբրեւ յագեցան, ասէ ցա-
շակերտսն, Ժողովեցէք զնշխարեալ կո-
13 տորսդ, զի մի՛ ինչ կորիցէ։ Ժողովեցին
եւ լցին երկոտասան սակառի զկոտո-
րոցն ի հինգ գարեղէն նկանակէ անտի,
14 որ յաւելաւ ի կերողացն։ Իսկ մարդիկն
իբրեւ տեսին զնշանսն զոր արար՝ ա-
սէին եթէ Սա է ճշմարիտ մարգարէն,
որ գալոց էր յաշխարհ։
15 ԴԴ. Յիսուս իբրեւ գիտաց եթէ
գալոց են յափշտակել զնա զի արասս-
ցեն զնա թագաւոր, գնաց դարձեալ
16 ի լեառն միայն։ Եւ իբրեւ երեկոյ ե-
ղեւ, իջին աշակերտքն նորա ի ծով-
17 եզրն. Եւ մտեալ ի նաւ՝ գային յայն-
կոյս ծովուն ի Կափառնայում. եւ իբ-
րեւ նսեմացաւ, եւ չեւ եւս եկեալ էր
18 առ նոսա Յիսուս, Եւ ծովն ի սաստիկ

---

[1] Բազումք, ես գիտեմ
[2] ի բազումս պակասէ

[3] Ոմանք, աշակերտացն, և աշակերտքն բազմականացն

19 հողմոյ շնչելոյ յուզէր։ Եւ վարեալ
իբրեւ ասպարէզս քսան եւ հինգ կամ
երեսուն, տեսանէին զՅիսուս զի գնայր
ի վերայ ծովուն եւ մերձ էր ի նաւն,
20 զարհուրեցան։ Նա ասէ ցնոսա, Ես եմ,
21 մի՛ երկնչիք։ Եւ կամէին ընդունել
զնա ի նաւն. եւ վաղվաղակի եհաս
նաւն յերկիրն յոր երթային։
22 Դե. Ի վաղիւ անդր ժողովուրդն որ
կայր յայնկոյս ծովուն, տեսանէր թէ
այլ նաւ ոչ գոյր անդ բայց միայն ի
միոյն, յոր մտին աշակերտքն Յիսուսի.
եւ զի չէր մտեալ Յիսուս ընդ աշա-
կերտսն իւր ի նաւն, բայց միայն ա-
23 շակերտքն նորա գնացին։ ([1]Իբրեւ այլ
նաւք գային՝ ի Տիբերեայ մօտ յայն տե-
24 ղին՝ ուր զհացն [2]կերան։) Իսկ իբրեւ
ետես ժողովուրդն եթէ Յիսուս ոչ է
անդ եւ ոչ աշակերտքն նորա, առին
նոքա զնաւսն, եւ եկին ի Կափառնա-
25 ում խնդրել զՅիսուս։ Եւ իբրեւ գտին
զնա յայնկոյս ծովուն, ասեն ցնա,
26 Ռաբբի, ե՞րբ եկիր այսր։ Պատասխա-
նի ետ նոցա Յիսուս եւ ասէ, Ամէն
ամէն ասեմ ձեզ, Խնդրէք զիս, իբր
ոչ եթէ զի նշանս ինչ տեսէք, այլ զի
կերայք ի հացէ անտի եւ յագեցարուք։
27 [3]Երթայք գործեցէք մի՛ զկորստական
կերակուրն, այլ զկերակուրն որ մնայ
ի կեանսն յաւիտենականս, զոր Որդին
մարդոյ տացէ ձեզ. քանզի զնա Հայր
28 կնքեաց, Աստուած։ Ասեն ցնա, Զի՞նչ
առնիցեմք զի զգործսն Աստուծոյ գոր-
29 ծեսցուք։ Պատասխանի ետ Յիսուս եւ
ասէ ցնոսա, Այս է գործն Աստուծոյ,
զի հաւատասջիք յայն զոր առաքեացն
30 նա։ Ասեն ցնա, Զի՞նչ նշան առնիցես
զի տեսցուք եւ հաւատասցուք. զի՞նչ
31 գործիցես։ Հարքն մեր կերան զմանա-
նայն յանապատի անդ, որպէս եւ գրեալ
32 է, Հաց յերկնից ետ նոցա ուտել։ Ասէ
ցնոսա Յիսուս, Ամէն ամէն ասեմ ձեզ
թէ Ոչ Մովսէս ետ ձեզ զհացն յերկնից,
այլ Հայրն իմ տայ ձեզ զհացն յերկնից
33 զճշմարիտ։ Զի հաց յԱստուծոյ է, որ
իջանէն յերկնից եւ կեանս տայ աշ-
34 խարհի։ Ասեն ցնա, Տէր, յամենայն
35 ժամ տուր մեզ զհացն զայն։ Ասէ ցնո-
սա Յիսուս, Ես եմ հացն կենաց. որ

[1]Ոմն., Բայց այլ նաւք եկին
[2]Բազում., կերան յորժամ գոհացաւ Տէր
[3]Ի Յ[illegible]

գայ առ իս՝ ոչ քաղցիցէ, եւ որ հաւա-
36 տայ յիս՝ ոչ երբեք ծարաւեսցի։ Այլ
ասացի ձեզ եթէ տեսէք զիս եւ ոչ հա-
37 ւատայք։ Զամենայն զոր տայ ինձ
Հայր՝ առ իս եկեսցէ. եւ որ գայ առ իս՝
38 ոչ հանից արտաքս։ Զի իջի ես յերկ-
նից, ոչ զի զկամս իմ արարից, այլ
զկամս այնորիկ որ առաքեացն զիս։
39 Դջ. Այս են կամք Հօր իմոյ որ ա-
ռաքեացն զիս, զի զամենայն զոր ետ
ցիս հայր՝ ոչ կորուսից ի նմանէ, այլ
40 յարուցից զնա յաւուրն յետնում։ Այս
են կամք Հօր իմոյ, զի ամենայն որ
տեսանիցէ զՈրդի եւ հաւատայցէ ի նա,
ընկալցի զկեանսն յաւիտենականս, եւ
ես յարուցից զնա յաւուրն յետնում։
41 Տրտնջէին զնմանէ Հրեայքն, զի ա-
սաց թէ Ես եմ հացն իջեալ յերկնից,
42 Եւ ասէին, Ո՞չ սա է Յիսուս որդին
Յովսեփու, զորոյ մեք գիտեմք զհայրն
եւ զմայր. իսկ արդ զիա՞րդ ասէ եթէ
43 Ես յերկնից իջի։ Պատասխանի ետ Յի-
սուս եւ ասէ ցնոսա, Մի՛ քրթմնջէք
44 ընդ միմեանս։ Ոչ ոք կարէ գալ առ
իս, եթէ ոչ Հայրն որ զիս առաքեաց՝
ձգեսցէ զնա. եւ ես յարուցից զնա յա-
45 ւուրն յետնում։ Գրեալ է ի մարգա-
րէս, Եւ եղիցին ամենեքեան ուսեալք
յԱստուծոյ. ամենայն որ լսէ ի Հօրէ
46 եւ ուսանի՝ գայ առ իս։ Իբրեւ ոչ եթէ
զՀայր ուրուք տեսեալ իցէ, եթէ ոչ
որ էն յԱստուծոյ՝ նա ետես զՀայր։
47 Ամէն ամէն ասեմ ձեզ զի Որ [4]հաւատայ՝
ընդունի զկեանսն յաւիտենականս։
48 Ես եմ հացն կենաց։ (49) Հարքն ձեր
կերան զմանանայն յանապատին եւ
50 մեռան։ Այս է հացն որ յերկնից իջ-
եալ է, զի որ ուտիցէ ոք ի սմանէ՝ մի՛
51 մեռանիցի։ Ես եմ հացն կենդանի, որ
52 յերկնից իջեալ։ Եթէ ոք ուտիցէ ի
հացէ յայսմանէ, կեցցէ յաւիտեան.
եւ հացն զոր ես տաց՝ մարմին իմ է,
զոր ես տաց վասն կենաց աշխարհի։
53 Մարտնչէին ընդ միմեանս Հրեայքն
եւ ասէին, Զիա՞րդ կարէ սա տալ մեզ
54 զմարմին իւր յուտել։ Ասէ ցնոսա Յի-
սուս, Ամէն ամէն ասեմ ձեզ, Եթէ ոչ
կերիջիք զմարմին Որդւոյ մարդոյ եւ
արբջիք զարիւն նորա, ոչ ունիք
55 կեանս յանձինս։ Որ ուտէ զմարմին իմ

[4]Ոմն., հաւատայ յիս

եւ ըմպէ զարիւն իմ, ունի զկեանս
յաւիտենականս, եւ ես յարուցից զնա
56 յաւուրն յետնում։ Զի մարմին իմ
ճշմարիտ կերակուր է, եւ արիւն իմ
57 ճշմարիտ ըմպելի է։ Որ ուտէ զմարմին
իմ եւ ըմպէ զարիւն իմ, յիս բնակես-
58 ցէ, եւ ես ի նմա։ Որպէս առաքեաց
զիս կենդանին Հայր, եւ ես կենդանի
եմ վասն Հօր. եւ որ ուտէն զիս՝ եւ
59 նա կեցցէ վասն իմ։ Այս է հացն որ
յերկնից իջեալ. ոչ որպէս կերան հարքն
ձեր զմանանայն եւ մեռան. որ ուտէ
զհացս զայս՝ կեցցէ յաւիտեան։
60 Զայս ասաց ի ժողովրդեանն յուսու-
61 ցանելն ի Կափառնայում։ Եւ բազումք
յաշակերտացն իբրեւ լուան, ասեն,
Խիստ է բանդ այդ, ո՞վ կարէ լսել դմա։
62 Իբրեւ գիտաց Յիսուս յանձն իւր եթէ
տրտնջեն վասն այնորիկ աշակերտքն
նորա, ասէ ցնոսա, Այդ գայթակղե-
63 ցուցանէ՞ զձեզ։ Իսկ արդ, եթէ տե-
սանիցէք զՈրդի մարդոյ, զի ելանիցէ
64 ուր էր զառաջինն։ Հոգին է կենդա-
նարար, մարմին ինչ ոչ օգնէ. զբանն
զոր ես խօսեցայ ընդ ձեզ՝ հոգի է եւ
65 կեանք։ Այլ են ոմանք ի ձէնջ որ ոչ
հաւատան. քանզի գիտէր Յիսուս ի
սկզբանէ ով են այնոքիկ որ ոչն հա-
ւատան, եւ ով այն է որ մատնելոցն
66 է զնա։ Եւ ասէր, Վասն այնորիկ
ասացի ձեզ թէ ոչ ոք կարէ գալ առ
իս, եթէ ոչ իցէ տուեալ նմա ի Հօրէ
իմմէ։
67 Յայսմանէ բազումք յաշակերտացն
նորա չոգան յետս, եւ ոչ եւս շրջէին
68 ընդ նմա։ Ասէ Յիսուս ցերկոտասան
աշակերտսն, Միթէ եւ դո՞ւք կամիք
69 երթալ։ Պատասխանի ետ նմա Սիմովն
Պետրոս, Տէր, առ ո՞վ երթիցուք,
բանս կենաց յաւիտենականաց ունիս։
70 Եւ մեք հաւատացաք եւ ծանեաք եթէ
դու ես [1]Քրիստոսն Որդի Աստուծոյ"։
71 Պատասխանի ետ նոցա Յիսուս, Ո՞չ
ես զձեզ զերկոտասանսդ ընտրեցի,
72 եւ մի դ ի ձէնջ սատանայ է։ Եւ ասէր
զՍիմովնեան [2]Յուդայէ Իսկարիովտա-
ցւոյ", զի նա իսկ մատնելոց էր զնա,
եւ մի էր յերկոտասանիցն։

[1]Ոմն․, Սուրբն Աստուծոյ. այլք՝ Սուրբն Աստուծոյ կենդանւոյ

[2]Օրին․ Գ, Յուդայէ որ ի Կարիովտայ

ԳԼ. Է

1 ԴԷ. Եւ յետ այսորիկ շրջէր Յիսուս
ի Գալիլեա, քանզի ոչ կամէր ի Հրէաս-
տանի շրջել, զի խնդրէին զնա Հրեայքն
սպանանել։
2 Եւ էր մերձ տօնն Հրէից տաղաւա-
3 րահարաց։ Ասեն ցնա եղբարքն նորա,
Գնա աստի եւ երթ ի Հրէաստան, զի
եւ աշակերտքն քո տեսցեն զգործսդ
4 քո զոր գործես։ Զի ոչ ոք է որ ի
ծածուկ ինչ գործէ, եւ խնդրէ ինքն
համարձակ լինել. եթէ զայդ գործես,
5 յայտնեա զանձն քո աշխարհի։ Քանզի
եւ եղբարքն իսկ չէին հաւատացեալ
6 ի նա։ Ասէ ցնոսա Յիսուս, Ժամանակ
իմ չեւ է հասեալ, բայց ձեր ժամանակ
7 յամենայն ժամու պատրաստ է։ Ոչ
կարէ աշխարհ ատել զձեզ, բայց զիս
ատեայ, զի ես վկայեմ վասն նորա
եթէ գործքն իւր չարութեան են։
8 Դուք երթայք ի տօնն յայն, ես ոչ [3]եր-
թամ ի տօնն յայն, զի իմ ժամանակ
9 չեւ է լցեալ։ Զայս իբրեւ ասաց, ինքն
10 մնաց անդէն ի Գալիլեա։ Իբրեւ ելին
եղբարքն նորա, ապա եւ ինքն ել ի
տօնն, ոչ յայտնի այլ իբրեւ ի ծածուկ։
11 Եւ Հրեայքն խնդրէին զնա ի տօնի անդ
12 եւ ասէին, Ո՞ւր իցէ նա։ Եւ [4]քրթմըն-
ջիւն էր զնմանէ ի ժողովուրդսն. կէսքն
ասէին թէ Բարւոք է. այլքն ասէին,
Ոչ, այլ մոլորեցուցանէ զժողովուրդն։
13 Եւ ոչ ոք համարձակ խօսէր զնմանէ
վասն երկիւղին Հրէից։
14 ԵԿ. Իբրեւ տօնն ընդմիջեցաւ, ել
Յիսուս ի տաճարն եւ ուսուցանէր։
15 Զարմանային Հրեայքն եւ ասէին,
Զիա՞րդ զգիրս գիտէ սա, զի ուսեալ
16 ընաւ չիք։ Պատասխանի ետ նոցա Յի-
սուս եւ ասէ, Իմ վարդապետութիւնս
չէ իմ, այլ այնորիկ որ առաքեացն զիս։
17 Եթէ ոք կամի զկամս նորա առնել,
գիտասցէ վասն վարդապետութեանս,
յԱստուծո՞յ իցէ արդեւք եթէ ես ինչ
18 յանձնէ իմմէ խօսիմ։ Որ յանձնէ իւրմէ
խօսի՝ փառս անձին իւրում խնդրէ,
իսկ որ խնդրէ զփառս այնորիկ որ ա-
ռաքեացն զնա՝ նա ճշմարիտ է, եւ

[3]Ոմն․, երթամ տակաւին

[4]Բազումք, քրթմնջիւն բազում

19 անիրաւութիւն ոչ գոյ ի նմա։ Ո՞չ
Մովսէս ետ ձեզ զօրէնսն, եւ ոչ ոք
20 ի ձէնջ առնէ զօրէնսն։ Զի՞ խնդրէք
զիս սպանանել․ պատասխանի ետ ժո-
ղովուրդն եւ ասէ, Դեւ գոյ ի քեզ, ո՞վ
21 խնդրէ զքեզ սպանանել։ Պատասխանի
ետ նոցա Յիսուս եւ ասէ, Գործ մի
գործեցի, եւ ամենեքին զարմացեալ
22 էք։ Վասն այնորիկ Մովսէս ետ ձեզ
թլփատութիւն, (զի ոչ եթէ ի Մովսի-
սէ էր, այլ ի հարց անտի,) եւ ի շա-
23 բաթու թլփատէք զմարդ։ Իսկ արդ
եթէ թլփատութիւն առնու մարդ ի
շաբաթու, զի մի՛ օրէնքն Մովսիսի
լուծցին, ընդ իս ցասուցեա՞լ էք զի ող-
ջոյն իսկ մարդ բժշկեցի ի շաբաթու։
24 ԵԲ․ Մի՛ ըստ աչս դատիք, այլ ուղիղ
դատաստան արարէք։
25 Ասէին ոմանք յԵրուսաղեմացւոց ան-
տի, Ո՞չ նա է սա զոր խնդրէին սպա-
26 նանել․ Եւ ահաւասիկ յայտնապէս խօսի,
եւ չասեն ինչ ընդ դմա․ գուցէ ար-
դեւք եւ իշխանքն գիտացին թէ սա
27 իցէ [1]Քրիստոսն։ Այլ զսա գիտեմք
ուստի է, իսկ Քրիստոսն յորժամ գայցէ,
28 ոչ ոք գիտէ ուստի է։ Աղաղակեաց
Յիսուս ի տաճարին, ուսուցանէր եւ
ասէր, Ե՛ւ զիս գիտէք, ե՛ւ ուստի եմն
գիտէք․ եւ յանձնէ իմմէ ոչ եմ եկեալ,
այլ է ճշմարիտ որ առաքեացն զիս զոր
29 դուքն ոչ գիտէք։ Ես գիտեմ զնա, զի
ի նմանէ իսկ եմ, եւ նա առաքեաց
30 զիս։ Խնդրէին զնա ունել՝ [2]եւ ել ի
ձեռաց նոցա․" եւ ոչ ոք արկ ի նա ձեռն.
31 զի չեւ էր հասեալ ժամ նորա։ Եւ բա-
զումք ի ժողովրդենէն հաւատացին ի
նա, եւ ասէին, Քրիստոսն յորժամ
գայցէ, միթէ աւելի՞ ինչ նշանս առ-
32 նիցէ քան զոր սայս առնէ։ Եւ լուան
փարիսեցիքն զտրտունջ ժողովրդեանն
զնմանէ․ եւ առաքեցին քահանայա-
պետքն եւ փարիսեցիքն սպասաւորս
33 զի կալցին զնա։ Ասէ Յիսուս, Փոքր
մեւս եւս ժամանակ ընդ ձեզ եմ, եւ
երթամ առ այն որ առաքեացն զիս։
34 Խնդրիցէք զիս եւ ոչ գտանիցէք, եւ
ուր եմն երթամ՝ դուք ոչ կարէք գալ։
35 Ասեն Հրեայքն ընդ միմեանս, Իսկ յո՞
երթայցէ դա, զի մեք ոչ գտանիցեմք
զդա․ միթէ ի սփիւռս հեթանոսա՞ց եր-
թայցէ եւ ուսուցանիցէ զհեթանոսս։
36 Զի՞նչ է բանն այն զոր ասաց, Խնդրի-
ցէք զիս եւ ոչ գտանիցէք․ եւ ուր եմն
երթամ՝ դուք ոչ կարէք գալ։
37 ԵԳ․ Ի վերջնում աւուր մեծի տօնին
կայր Յիսուս, աղաղակէր եւ ասէր,
Եթէ ոք ծարաւի իցէ, եկեսցէ առ իս
38 եւ արբցէ։ Որ հաւատայ յիս՝ որպէս
եւ ասեն գիրք, Գետք յորովայնէ նո-
րա բղխեսցեն ջրոյ կենդանութեան։
39 Զայս ասէր վասն Հոգւոյն զոր ընդու-
նելոց էին որ հաւատային ի նա․ զի
[3]չեւ էր Հոգի", քանզի Յիսուս չեւ էր
40 փառաւորեալ։ [4]Ոմանք ի ժողովրդենէն
իբրեւ լուէին զբանս զայս, ասէին, Սա
41 է ճշմարիտ մարգարէն։ Այլքն ասէին,
Սա է Քրիստոսն․ իսկ կէսքն ասէին,
Միթէ ի Գալիլեէ՞ գալոց իցէ Քրիստոսն։
42 Ո՞չ գիրք ասեն եթէ ի զաւակէ Դաւ-
թի եւ ի Բեթղեհեմ գեղջէ ուր Դաւիթն
43 էր՝ գալոց է Քրիստոս։ Եւ եղեւ հեր-
ձուած ի մէջ ժողովրդեանն վասն նո-
44 րա։ Եւ ոմանք ի նոցանէ կամեցան
ունել զնա, այլ ոչ ոք մխեաց ի նա
ձեռն։
45 Եւ եկին անդրէն սպասաւորքն առ
քահանայապետսն եւ փարիսեցիս, եւ
ասեն նոքա ցնոսա, Ընդէ՞ր ոչ ածէք
46 զնա այսր։ Պատասխանի ետուն սպա-
սաւորքն եւ ասեն, Ոչ երբեք այնպէս
47 խօսեցաւ մարդ որպէս այրն այն։ Պա-
տասխանի ետուն փարիսեցիքն եւ ա-
սեն, Միթէ եւ դո՞ւք մոլորեցարուք։
48 Միթէ ոք յիշխանացն հաւատա՞ց ի նա
49 կամ ի փարիսեցւոցն․ Այլ այն խաժա-
մուժ ամբոխ որ ոչ գիտէ զօրէնս, եւ
50 նզովեալ են։ Ասէ Նիկոդեմոս ցնոսա
(որ եկեալն էր առ նա գիշերի յառա-
51 ջագոյն, եւ մի էր ի նոցանէ), Միթէ
օրէնքն մեր դատի՞ն զմարդ, եթէ ոչ
լսեն ինչ նախ ի նմանէ, [5]կամ գիտեն
52 զինչ գործէ։ Պատասխանի ետուն նմա
եւ ասեն, Միթէ եւ դո՞ւ եւս ի Գա-
լիլեէ իցես․ քննեա եւ տես, զի մար-
գարէ ի Գալիլեէ ոչ յառնէ։

[1]Ոմանք, ճշմարտիւ Քրիստոսն
[2]ի բազումս պակասէ
[3]Ոմանք, չեւ էր տուեալ Հոգին Սուրբ
[4]Ոմանք, Բազումք
[5]Յոյն, և

## ԳԼ· Ը

1 [1]Եւ գնացին իւրաքանչիւր ոք ի տեղի
իւր, իսկ Յիսուս գնաց ի լեառն Ձի-
2 թենեաց։ Եւ ընդ առաւօտսն դարձեալ
եկն ի տաճարն, եւ գայր առ նա ամե-
նայն ժողովուրդն, եւ նստեալ ուսու-
3 ցանէր զնոսա։ Ածին առ նա դպիրքն
[2]եւ քահանայապետքն" եւ փարիսեցիք
կին մի ըմբռնեալ ի շնութեան. եւ
4 կացուցեալ զնա առաջի, Ասեն ցնա,
Վարդապետ, կինս այս ըմբռնեալ՝ ինքն
5 յայտնապէս շնացեալ է։ Եւ յօրէնսն
Մովսէս մեզ պատուիրեաց զայսպիսիս
քարկոծել. արդ դու զի՞նչ ասես վասն
6 զորա։ Զայս ասէին փորձելով զնա,
զի ունիցին ամբաստանութիւն զնմա-
նէ. իսկ Յիսուս ի խոնարհ նայելով
7 գրէր մատամբն յերկրի։ Իսկ իբրեւ
ստիպեցին հարցանելով ցնա, հայեցեալ
ի վեր՝ ասէ ցնոսա, Անմեղն ի ձէնջ
նախ նա ընկեսցէ քար ի վերայ դորա։
8 Եւ դարձեալ ի խոնարհ նայելով գրէր
9 յերկրի։ Եւ [3]լուեալ ելանէին" մի ըստ
միոջէ, սկսեալ յառաջնոցն մինչեւ ի
վերջինսն. եւ մնաց միայն Յիսուս, եւ
10 կինն կայր առաջի նորա։ [4]Պատասխա-
նի ետ Յիսուս եւ" ասէ ցնա, Կին դու,
[5]ո՞ւր են. ո՞չ ոք" զքեզ դատապար-
11 տեաց։ Եւ ասէ, Ոչ, Տէր. եւ ասէ Յի-
սուս, Եւ ոչ ես դատապարտեմ զքեզ,
երթ, յայսմ հետէ մի՛ մեղանչեր։"
12 ԵԴ· Դարձեալ խօսեցաւ ընդ նոսա
Յիսուս եւ ասէ, Ես եմ լոյս աշխարհի.
որ գայ զկնի իմ՝ ընդ խաւար մի՛ գնաս-
13 ցէ, այլ ընկալցի զլոյսն կենաց։ Ասեն
ցնա փարիսեցիքն, Դու վասն անձին
քո վկայես, եւ վկայութիւն քո չէ
14 ճշմարիտ։ Պատասխանի ետ Յիսուս
եւ ասէ ցնոսա, Թէպէտ եւ ես վկայեմ
վասն անձին իմոյ, վկայութիւն իմ
ճշմարիտ է. զի գիտեմ ուստի եկի եւ
յո երթամ. բայց դուք ոչ գիտէք ուստի

[1]Այս հատուածն համարեա պակասէ ի բազումս ի Յունարէն օրինակաց, որպէս եւ ի բազումս ի Հայերէն ձեռագրաց։

[2]Ի բազումս պակասէ

[3]Ոմանք, լուեալ եւ յանդիմանեալ ի խղճէ մտաց, ելանէին

[4]Ոմանք, Հայեցեալ Յիսուս ի վեր եւ ոչ զոք տեսեալ բաց ի կնոջէն,

[5]Ոմանք, ո՞ւր են որ չարախօսէինն զքէն. ո՞չ ոք

15 զամ կամ յո երթամ։ Դուք ըստ մարմ-
նոյ դատիք, ես ոչ դատիմ եւ ոչ զոք.
16 Թէպէտ եւ դատիմ ես զոք, դատաս-
տանն իմ ճշմարիտ է. զի չեմ միայն,
այլ ես եւ որ առաքեացն զիս Հայր։
17 Եւ յօրէնսն իսկ ձեր գրեալ է թէ Եր-
կուց մարդոց վկայութիւն ճշմարիտ է։
18 Ես եմ որ վկայեմ վասն իմ, եւ վկայէ
վասն իմ որ առաքեացն զիս Հայր։
19 Ասէին ցնա, Ո՞ւր է Հայր քո. պա-
տասխանի ետ Յիսուս եւ ասէ ցնոսա,
Ոչ զիս գիտէք եւ ոչ զՀայրն իմ. եթէ
զիս գիտէիք, եւ զՀայրն իմ թերեւս
գիտէիք։
20 Զայս բանս խօսեցաւ ի տան գանձին,
յորժամ ուսուցանէր ի տաճարի անդ.
եւ ոչ ոք կալաւ զնա, զի չեւ եւս
հասեալ էր ժամ նորա։
21 ԵԵ· Ասէ դարձեալ ցնոսա Յիսուս,
Ես երթամ, եւ խնդրիցէք զիս, եւ ի
մեղս ձեր մեռանիցիք. զի ուր ես
22 երթամ, դուք ոչ կարէք գալ։ Ասէին
Հրեայքն, Միթէ զիւրովի՞ն երթայցէ,
զի ասէ թէ Ուր ես երթամ, դուք
23 ոչ կարէք գալ։ Եւ ասէ ցնոսա, Դուք
ի ներքուստ աստի էք, եւ ես ի վե-
րուստ անտի եմ. դուք յաշխարհէ
աստի էք, ես չեմ յայսմ աշխարհէ։
24 Բայց ասացի ձեզ թէ ի մեղս ձեր մե-
ռանիցիք. զի թէ ոչ հաւատայցէք թէ
25 ես եմ, մեռանիցիք ի մեղս ձեր։ Ասեն
ցնա, Դու ո՞վ ես. ասէ ցնոսա Յիսուս,
[6]Նախ զի եւ խօսիմս իսկ ընդ ձեզ"։
26 Բազում ինչ ունիմ վասն ձեր խօսել
եւ դատել. այլ որ առաքեացն զիս՝
ճշմարիտ է. եւ ես զոր լուայն ի նմանէ՝
27 զայն խօսիմ յաշխարհի։ Եւ ոչ գիտա-
ցին թէ զՀօրէ ասէր ցնոսա։
28 Ասէ ցնոսա Յիսուս, Յորժամ բարձ-
րացուցանիցէք զՈրդի մարդոյ, յայն-
ժամ գիտասջիք թէ ես եմ. եւ յանձնէ
իմմէ ոչ ինչ առնեմ, այլ որպէս ու-
29 սոյց զիս Հայրն իմ, զայն խօսիմ։ Եւ
որ առաքեացն զիս՝ ընդ իս է. ոչ եթող
զիս միայն, զի ես զհաճոյս նորա առ-
նեմ հանապազ։
30 Իբրեւ զայս խօսեցաւ, բազումք հա-
ւատացին ի նա։
31 ԵԶ· Եւ ասէր Յիսուս առ Հրեայսն
հաւատացեալս, Եթէ դուք կացջիք

[6]Կամ, Զոր ի սկզբանէ անտի խօսիմ առ ձեզ

ի բանի իմում, ճշմարիտ աշակերտք
32 իմ էք · Եւ ծանիջիք զճշմարտութիւնն,
եւ ճշմարտութիւնն ազատեսցէ զձեզ ։
33 Պատասխանի ետուն նմա եւ ասեն,
Զաւակ Աբրահամու եմք, եւ ոչ ումեք
երբեք ծառայեցաք · զիա՞րդ ասես թէ
34 Ազատք լինիջիք ։ Պատասխանի ետ նո-
ցա Յիսուս, Ամէն ամէն ասեմ ձեզ թէ
Ամենայն որ առնէ զմեղս՝ ծառայ է
35 մեղաց ։ Եւ ծառայն ոչ յաւիտեան կայ
ի տան, իսկ որդին յաւիտեան կայ ։
36 Իսկ արդ եթէ Որդին զձեզ ազատե-
ցուսցէ, ճշմարիտ ազատք լինիջիք ։
37 Գիտեմ զի զաւակ Աբրահամու էք, այլ
խնդրէք սպանանել զիս, զի բանին
38 իմոյ չիք տեղի ի ձեզ ։ Ես զոր տեսի
առ Հօր իմում՝ խօսիմ, եւ դուք զոր
39 լուարուք ի հօրէն ձերմէ՝ առնէք ։ Պա-
տասխանի ետուն նմա եւ ասեն, Հայր
մեր Աբրահամ է · ասէ ցնոսա Յիսուս,
Եթէ որդիք Աբրահամու էիք, զգործսն
40 Աբրահամու գործէիք ։ Այլ այժմիկ
խնդրէք սպանանել զիս, զայր մի՝ որ
ձեզ զճշմարտութիւն խօսեցայ, զոր
լուայ [1]ի Հօրէ իմմէ՝ · զայդ Աբրահամ
41 ոչ արար ։ Դուք առնէք զգործս հօրն
ձերոյ · ասեն ցնա, Մեք ի պոռնկու-
թենէ չեմք ծնեալ · մի է Հայր մեր, Աս-
42 տուած ։ Ասէ ցնոսա Յիսուս, Եթէ Աս-
տուած էր Հայր ձեր, սիրէիք արդեւք
զիս · զի ես յԱստուծոյ ելի եւ եկի,
եւ ոչ եթէ յանձնէ ինչ եկի, այլ Նա
43 առաքեաց զիս ։ Ընդէ՞ր զխօսս իմ ոչ
գիտէք դուք · վասն զի ոչ կարէք լսել
44 զբանն իմ ։ Դուք ի հօրէ ի Սատանայէ
էք, եւ զցանկութիւնս հօրն ձերոյ կա-
միք առնել · զի նա մարդասպան էր
ի սկզբանէ, եւ ի ճշմարտութեան ոչ
եկաց, զի ոչ գոյ ճշմարտութիւն ի
նմա · յորժամ խօսիցի սուտ, յիւրոց
անտի խօսի · զի սուտ է եւ հայր նո-
45 րա ։ Իսկ ես զի զճշմարտութիւն խօ-
46 սիմ, ոչ հաւատայք ինձ ։ Ո՞ ի ձէնջ
յանդիմանէ զիս վասն մեղաց · եթէ
զճշմարիտն ասեմ ձեզ, ընդէ՞ր ոչ հա-
47 ւատայք ինձ ։ Որ էն յԱստուծոյ՝ զբանս
Աստուծոյ լսէ · եւ դուք վասն այնորիկ
48 ոչ լսէք, զի չէք յԱստուծոյ ։ Պատաս-
խանի ետուն Հրեայքն եւ ասեն ցնա,
Ո՞չ բարւոք ասեմք մեք եթէ Սամա-
49 րացի ես դու, եւ դեւ գոյ ի քեզ ։ Պա-
տասխանի ետ Յիսուս եւ ասէ, Յիս
դեւ ոչ գոյ, այլ պատուեմ զՀայր իմ,
50 եւ դուք անարգէք զիս ։ Ես ոչ խնդրեմ
զփառս իմ, է որ խնդրէն եւ դատի ։
51 Ամէն ամէն ասեմ ձեզ, Եթէ ոք զբանն
իմ պահեսցէ, զմահ մի՛ տեսցէ ի յա-
52 ւիտեան ։ Ասեն ցնա Հրեայքն, Արդ
գիտացաք թէ դեւ գոյ ի քեզ · Աբրա-
համ մեռաւ, եւ մարգարէքն, եւ դու
ասես, Եթէ ոք զբանն իմ պահեսցէ,
մի՛ ճաշակեսցէ զմահ ի յաւիտեան ։
53 Մի թէ դու մե՞ծ ինչ ոք իցես քան զհայր
մեր Աբրահամ, որ մեռաւ, եւ մար-
գարէքն մեռան · արդ դու զո՞ առնես
54 զքեզ ։ Պատասխանի ետ Յիսուս, Եթէ
ես փառաւորեմ զանձն իմ, փառքն իմ
ոչինչ են · է Հայր որ փառաւորէ զիս,
զորմէ դուքն ասէք թէ Աստուած [2]մեր
55 է · Եւ ոչ ճանաչէք զնա, բայց ես գի-
տեմ զնա · եւ եթէ ասեմ թէ ոչ գիտեմ
զնա, ձեզ նման սուտ լինիմ · այլ գի-
56 տեմ զնա եւ զբան նորա պահեմ ։ Աբ-
րահամ հայր ձեր ցնկացաւ տեսանել
57 զօր իմ, ետես եւ ուրախ եղեւ ։ Ասեն
ցնա Հրեայքն, Յիսուն ամ չեւ եւս է
58 քո, եւ զԱբրահա՞մ տեսեր ։ Ասէ ցնոսա
Յիսուս, Ամէն ամէն ասեմ ձեզ, Յա-
ռաջ քան զլինելն Աբրահամու եմ ես ։
59 Վէմս առին զի արկցեն ի վերայ նորա,
եւ Յիսուս խոյս ետ եւ ել գնաց ի տա-
ճարէ անտի ։

## ԳԼ· Թ

1 ԵՀ· Եւ մինչդեռ անցանէր, ետես այր
2 մի կոյր ի ծնէ · Եւ հարցին ցնա աշա-
կերտքն նորա եւ ասեն, Ռաբբի, ո՞յր
մեղս է, սորա՞ թէ հօր եւ մօր իւրոյ,
3 զի կոյր ծնցի ։ Պատասխանի ետ Յի-
սուս, Ոչ դորա մեղս է, եւ ոչ հօր
եւ մօր իւրոյ · այլ զի յայտնի լիցին
4 գործքն Աստուծոյ ի դմա ։ Եւ ինձ
պարտ է գործել զգործս այնորիկ որ
առաքեացն զիս, մինչ աւուր կայ · գայ
գիշեր, յորժամ ոչ ոք կարէ գործել ։
5 Մինչդեռ յաշխարհի եմ, լոյս եմ աշ-
6 խարհի ։ Զայս իբրեւ ասաց, եթուք
ի գետին եւ արար կաւ ի թքոյն, եւ
ծեփեաց զկաւն ի վերայ աչաց կուրին ·

[1] Բազումք ; յԱստուծոյ

[2] Ոմանք, ձեր

7 Եւ ասէ ցնա, Երթ, լուա յաւազանին
Սիղովամայ, (որ թարգմանի Առաքեալ)
չոգաւ լուացաւ, եկն եւ տեսանէր։
8 Իսկ դրացիքն եւ որոց տեսեալն էր
զնա յառաջագոյն թէ [1]մուրացիկ էր՝
ասէին, Ո՞չ սա էր որ նստէրն եւ մու-
9 րանայր։ Կէսքն ասէին, Նա է. Այլքն
ասէին, [2]Ոչ, այլ՝ նման է նմա. եւ
10 ինքն ասէր թէ, Ես եմ։ Ասեն ցնա,
11 Իսկ զիա՞րդ բացան աչք քո։ Նա ետ
պատասխանի, Այր մի որում Յիսուսն
ասեն՝ կաւ արար եւ ծեփեաց զաչս իմ,
եւ ասէ ցիս, Երթ ի Սիլովամ եւ լուա.
12 չոգայ, լուացայ եւ տեսանեմ։ Ասեն
ցնա, Ո՞ւր է նա. ասէ ցնոսա, Ոչ գի-
տեմ։
13 Ածին առ փարիսեցիսն զնա որ եր-
14 բեմն կոյրն էր։ Եւ էր շաբաթ, յոր-
ժամ զկաւն արար Յիսուս, եւ եբաց
15 զաչս կուրին։ Դարձեալ հարցանէին
զնա եւ փարիսեցիքն թէ Զիա՞րդ տե-
սանես. եւ նա ասէ ցնոսա, Կաւ եդ
ի վերայ աչաց իմոց, եւ լուացայ եւ տե-
16 սանեմ։ Ասեն ոմանք ի փարիսեցւոցն,
Ոչ է այրն այն յԱստուծոյ, զի զշաբաթս
ոչ պահէ. կէսքն ասէին, Իսկ զիա՞րդ
կարէ մարդ մեղաւոր այսպիսի նշանս
առնել. եւ էին հերձուածք ի մէջ նո-
17 ցա։ Ասեն դարձեալ ցկոյրն, Դու զի՞
ասես վասն նորա զի եբաց զաչս քո.
18 եւ նա ասէր թէ, Մարգարէ է։ Եւ ոչ
հաւատային Հրեայքն զնմանէ թէ կոյր
էր եւ բացաւ, մինչեւ կոչեցին զծնողս
19 բացելոյն. Հարցին ցնոսա եւ ասեն,
Սա՞ է որդին ձեր, զորմէ դուքն ասէիք
եթէ կոյր ծնաւ, արդ զիա՞րդ տեսա-
20 նէ։ Պատասխանի ետուն նոցա ծնողքն
նորա եւ ասեն, Գիտեմք զի սա է որ-
21 դին մեր, եւ զի կոյր ծնաւ. Բայց
զիա՛րդ այժմդ տեսանէ, ոչ գիտեմք.
կամ թէ ո՛վ եբաց զաչս դորա, մեք
ոչ գիտեմք. ցդա իսկ հարցէք, ինքնին
ի չափ հասեալ է, ինքն իսկ խօսեսցի
22 վասն իւր։ Զայս ասացին ծնողքն նո-
րա, զի երկնչէին ի Հրէիցն. քանզի
ուխտ եդեալ էր Հրէից, եթէ ոք խոս-
տովանեսցի զնա Քրիստոս, ի բաց կաց-
23 ցէ ի ժողովրդենէն։ Վասն այնորիկ ա-
սացին ծնողքն նորա թէ Ինքնին ի չափ
24 հասեալ է, ցնա իսկ հարցէք։ Դարձեալ
կրկին անգամ կոչեցին զայրն որ կոյրն
էր, եւ ասեն ցնա, Տուր փառս Ա-
ստուծոյ. մեք գիտեմք զի այրն այն
25 մեղաւոր է։ Եւ նա ասէ, Թէ մեղաւոր
իցէ, ես ոչ գիտեմ. բայց զայս գիտեմ,
26 զի կոյր էի եւ արդ տեսանեմ։ Դար-
ձեալ ասեն ցնա, Զի՞նչ արար քեզ,
27 զիա՞րդ եբաց զաչս քո։ Պատասխանի
ետ նոցա, Այժմ ասացի ձեզ եւ ոչ
լուարուք. զի՞ կամիք միւսանգամ
լսել. միթէ եւ դո՞ւք կամիք աշակեր-
28 տել նմա։ Նոքա հայհոյէին զնա եւ ա-
սէին, Դու լիջիր նորա աշակերտ, մեք
29 Մովսիսի աշակերտք եմք։ Մեք գի-
տեմք զի ընդ Մովսիսի խօսեցաւ Ա-
ստուած, զսա ոչ գիտեմք ուստի՛ իցէ։
30 Պատասխանի ետ այրն եւ ասէ ցնոսա,
Այդ իսկ են սքանչելիք, զի դուք ոչ
գիտէք ուստի՛ իցէ, եւ զիմ զաչս ե-
31 բաց։ Գիտեմք զի Աստուած մեղա-
ւորաց ոչ լսէ, բայց եթէ աստուածա-
պաշտ ոք իցէ եւ զկամս նորա առնիցէ,
32 նմա լսէ։ Ի յաւիտենից ոք ոչ լուաւ
եթէ եբաց ոք զաչս կուրի ի ծնէ կոյր
33 ծնելոյ։ Եթէ ոչ յԱստուծոյ էր այրն
34 այն, ոչ կարէր առնել ինչ։ Պատաս-
խանի ետուն եւ ասեն ցնա, Ի մեղս
իսկ ծնեալ ես ամենեւին, եւ դու վար-
դապե՞տ լինիս մեր. եւ հանին զնա
արտաքս։
35 Լուաւ Յիսուս եթէ հանին զնա ար-
տաքս, եւ իբրեւ եգիտ զնա, ասէ ցնա,
36 Դու հաւատա՞ս յՈրդի Աստուծոյ։ Նա
պատասխանի ետ եւ ասէ, Տէր, ո՞վ է
37 զի հաւատացից ի նա։ Ասէ ցնա Յի-
սուս, Ե՛ւ տեսեր զնա, ե՛ւ որ խօսիդ
38 ընդ քեզ՝ նա է։ Եւ նա ասէ, Հաւա-
տամ, Տէր. եւ երկիր եպագ նմա։
39 ՁԿ. Եւ ասէ Յիսուս, Ի դատաս-
տան եկի յաշխարհս յայս, զի որ ոչն
տեսանեն՝ տեսցեն, եւ որք տեսանենն՝
40 կուրասցին։ Լուան ոմանք ի փարի-
սեցւոցն որք ընդ նմա էին, եւ ասեն
ցնա, Միթէ եւ մե՞ք կոյրք իցեմք։
41 Ասէ ցնոսա Յիսուս, Եթէ կոյրք էիք,
ոչ էր ձեր մեղ. բայց արդ ասէք եթէ
Տեսանեմք, եւ մեղքն ձեր ի ձեզ հաս-
տատեալ են։

ԳԼ. Ժ

1 Ամէն ամէն ասեմ ձեզ, Որ ոչ մտանէ

[1] Ոմանք, կոյր

[2] Ցոմանս դոլով

ընդ դուռն ի գաւիթ ոչխարացն, այլ
ընդ այլ ելանէ՝ նա գող է եւ աւազակ։
2 Իսկ որ մտանէ ընդ դուռն՝ հովիւ է
3 ոչխարաց։ Նմա դռնապանն բանայ, եւ
ոչխարքն ձայնի նորա լսեն, եւ զիւր
ոչխարսն կոչէ յանուանէ եւ հանէ
4 զնոսա։ Եւ յորժամ [1]զիւրն զամենայն՝
հանիցէ, առաջի նոցա երթայ, եւ ոչ-
խարքն զհետ նորա երթան, զի ճա-
5 նաչեն զձայն նորա։ Զօտարի զհետ ոչ
երթիցեն, այլ փախիցեն ի նմանէ, զի
ոչ ճանաչեն զձայն օտարաց։
6 Զայս առակ ասաց նոցա Յիսուս,
եւ նոքա ոչ գիտէին եթէ զինչ էր որ
7 խօսէրն ընդ նոսա։ Դարձեալ ասէ ցնո-
սա Յիսուս, Ամէն ամէն ասեմ ձեզ զի
8 Ես եմ դուռն ոչխարաց։ Ամենեքեան
որ յառաջ քան զիս եկին՝ գողք էին
եւ աւազակք. այլ ոչ լուան նոցա ոչ-
9 խարքն։ Ես եմ դուռն, ընդ իս եթէ
ոք մտանիցէ, կեցցէ. մտցէ եւ ելցէ
10 եւ ճարակ գտցէ։ Գող ոչ գայ, եթէ
ոչ զի գողասցի եւ սպանցէ եւ կորուս-
ցէ. ես եկի զի զկեանս ունիցին, եւ
առաւել եւս ունիցին։
11 ՁԲ. Ես եմ հովիւն քաջ. հովիւ քաջ
զանձն իւր դնէ ի վերայ ոչխարաց։
12 Իսկ վարձկանն որ ոչ է հովիւ, որոյ
ոչ իւր են ոչխարքն, իբրեւ տեսանէ
զգայլն զի գայ, թողու զոչխարսն եւ
փախչի. եւ գայլն յափշտակէ զնոսա
13 եւ ցրուէ. [2]Քանզի վարձկան է, եւ չէ
14 փոյթ նմա վասն ոչխարացն։ Ես եմ
հովիւն քաջ, եւ ճանաչեմ զիմսն եւ
15 ճանաչիմ յիմոցն։ Որպէս գիտէ զիս
Հայր, գիտեմ եւ ես զՀայր. եւ զանձն
16 իմ դնեմ ի վերայ ոչխարաց։ Նա եւ
այլ եւս ոչխարք են իմ որ ոչ են յայսմ
գաւթէ, եւ զայնս եւս պարտ է ինձ
ածել այսր, եւ ձայնի իմում լուիցեն,
17 եւ եղիցին մի հօտ եւ մի հովիւ։ Վասն
այնորիկ սիրէ զիս Հայր իմ, զի ես
դնեմ զանձն իմ, զի միւսանգամ առից
18 զնա։ Ոչ ոք հանէ զնա յինէն, այլ ես
դնեմ զնա անձամբ իմով. իշխանու-
թիւն ունիմ դնել զնա, եւ իշխանու-
թիւն ունիմ միւսանգամ առնուլ զնա.
զայս պատուէր առի ի Հօրէ իմմէ։
19 Դարձեալ հերձուած լինէր ի մէջ
20 Հրէից վասն բանիցս այսոցիկ։ Եւ ա-
սէին բազումք ի նոցանէ, Դեւ գոյ ի
նմա եւ մոլեգնի, զի՞ լսէք նմա։
21 Կէսքն ասէին, Այսպիսի բանք ոչ դի-
ւահարի են. միթէ դեւ կարէ՞ զաչս
կուրի բանալ։
22 ՁԳ. Եղեն յայնժամ նաւակատիքն
23 յԵրուսաղէմ, եւ ձմեռն էր։ Եւ շրջէր
Յիսուս ի տաճարին ի սրահին Սողո-
24 մոնի։ Շուրջ եղեն զնովաւ Հրեայքն
եւ ասեն, Մինչեւ յե՞րբ թափես զոգիս
մեր. եթէ դու ես Քրիստոսն, ասա
25 մեզ համարձակ։ Պատասխանի ետ նո-
ցա Յիսուս եւ ասէ, Ասացի ձեզ եւ
ոչ հաւատայք [3]ինձ. զգործսն զոր ես
գործեմ յանուն Հօր իմոյ՝ նոքին իսկ
26 վկայեն վասն իմ։ Այլ դուք ոչ հաւա-
տայք, զի չէք յոչխարաց անտի [4]իմոց։
27 Ոչխարք իմ ձայնի իմում լսեն, եւ ես
ճանաչեմ զնոսա, եւ զկնի իմ գան.
28 Եւ ես տամ նոցա զկեանսն յաւիտե-
նականս. եւ մի՛ կորիցեն յաւիտեան,
եւ մի՛ ոք յափշտակեսցէ զնոսա ի ձե-
29 ռաց իմոց։ Հայրն իմ որ ետ ինձ զնո-
սա՝ մեծ է քան զամենայն, եւ ոչ ոք
կարէ յափշտակել ի ձեռաց Հօր իմոյ։
30 Ես եւ Հայր [5]իմ մի եմք։ (31) Վէմս
առին Հրեայքն զի քարկոծ արասցեն
32 զնա։ Պատասխանի ետ նոցա Յիսուս,
Բազում գործս բարիս ցուցի ձեզ ի Հօրէ
իմմէ. վասն որո՞յ գործոյ ի նոցանէ
33 քարկոծ առնէք զիս։ Պատասխանի
ետուն նմա Հրեայքն, Վասն բարւոյ
գործոյ ոչ առնեմք զքեզ քարկոծ, այլ
վասն հայհոյութեան. եւ զի դու մարդ
ես, եւ զանձն քո Աստուած առնես։
34 Պատասխանի ետ նոցա Յիսուս, Ո՞չ
յօրէնս ձեր գրեալ է, Ես ասացի թէ
35 աստուածք իցէք։ Իսկ եթէ զնոսա
աստուածս ասէ, առ որս բանն Աս-
տուծոյ եղեւ, (եւ չէ մարթ եղծանել
36 գրոյն,) Իսկ զոր Հայր սրբեաց եւ ա-
ռաքեաց յաշխարհ, դուք ասէ՞ք թէ
Հայհոյես, զի ասացի թէ Որդի Աստու-
37 ծոյ եմ։ Եթէ ոչ գործեմ զգործս Հօր
38 իմոյ, մի՛ հաւատայք ինձ։ Ապա թէ
գործեմ, թէ եւ ինձ ոչ հաւատայք,
սակայն գործոցն հաւատացէք. զի գի-

---

[1] Ոմանք+, զիւր ոչխարսն
[2] Ոմանք+, Իսկ վարձկանն փախչի, քանզի
[3] Ի բազումս պակասէ
[4] Ոմանք+, իմոց, որպէս ասացի ձեզ
[5] Յոմանս պակասէ

տասջիք եւ ¹ծանիջիք եթէ Հայր յիս,
եւ ես ի Հայր։
39 Դարձեալ խնդրէին զնա ունել, եւ
40 ել ի ձեռաց նոցա։ Եւ գնաց միւսան-
գամ յայնկոյս Յորդանանու ի տեղին
ուր էր Յովհաննէս զառաջինն եւ մկըր-
41 տէր, եւ անդ լինէր։ Եկին բազումք
առ նա եւ ասէին, Զի Յովհաննէս² նշան
42 ինչ ոչ արար. Բայց զամենայն զոր
ասաց Յովհաննէս վասն նորա, ճշմա-
րիտ էր. եւ բազումք հաւատացին
ի նա անդ։

## Գլ. ԺԱ

1 Ձդ. Եւ էր ոմն հիւանդ Ղազարոս ի
Բեթանեայ, ի գեղջէ Մարեմայ եւ Մար-
2 թայի քեռ նորա։ Այս այն Մարիամ էր
որ օծ զՏէրն իւղով, եւ ջնջեաց զոտս
նորա հերով իւրով. որոյ եղբայրն Ղա-
3 զարոս հիւանդ էր։ Առաքեցին առ նա
քորքն նորա եւ ասեն, Տէր, ահաւա-
սիկ զոր դուն սիրէիր՝ հիւանդացեալ է։
4 Իբրեւ լուաւ Յիսուս, ասէ, Այն հի-
ւանդութիւն չէ ի մահ, այլ վասն փա-
ռացն Աստուծոյ. զի փառաւոր լիցի
5 Որդի Աստուծոյ այնուիկ։ Եւ սիրէր
Յիսուս զՄարթա եւ զքոյր նորա
6 ³զՄարիամ եւ զՂազար։ Իբրեւ լուաւ
թէ հիւանդացեալ է, զտեղի կալաւ
7 անդէն ուր էրն աւուրս երկուս։ Ապա
յետ այնորիկ ասէ ցնոսա, Եկայք եր-
թիցուք միւսանգամ ի Հրէաստան։
8 Ասեն ցնա աշակերտքն, Ռաբբի, այժմ
եւս խնդրէին զքեզ Հրեայքն քարկոծ
առնել. եւ դարձեա՞լ երթաս անդրէն։
9 Պատասխանի ետ Յիսուս, Ո՞չ երկո-
տասան ժամ է աւուր. եթէ ոք գնայ
ի տուընջեան, ոչ գայթակղի, զի զլոյս
10 աշխարհիս այսորիկ տեսանէ. Ապա թէ
ոք գնայ գիշերի, գայթակղի, զի լոյս
11 ոչ գոյ ընդ նմա։ Զայս իբրեւ ասաց,
յետ այսորիկ ասէ ցնոսա, Ղազարոս
բարեկամ մեր ննջեաց, այլ երթամ զի
12 զարթուցից զնա։ Ասեն ցնա աշա-
կերտքն, Տէր, եթէ ննջեաց, ապա
13 ապրի։ Այլ Յիսուս վասն մահուն նո-
րա ասէր. նոցա այսպէս թուեցաւ թէ
14 վասն ննջելոյ քնոյն ասէր։ Յայնժամ
ասէ ցնոսա Յիսուս յայտնապէս, Ղա-
15 զարոս մեռաւ. Եւ ես ուրախ եմ վասն
ձեր, զի դուք հաւատասջիք ³ինձ, զի
ես չէի անդ. բայց արդ եկայք երթի-
16 ցուք առ նա։ Ասէ Թովմաս, անուան-
եալն Երկուորեակ, ցաշակերտակիցսն,
Օն, եկայք եւ մեք զի ընդ նմա մեռ-
ցուք։
17 Եկն Յիսուս, եգիտ զնա չորեքօրեայ
18 ի գերեզմանի։ Եւ էր Բեթանիա մերձ
յԵրուսաղէմ իբրեւ ասպարիսօք հնգե-
19 տասան։ Բազումք ի Հրէից անտի եկ-
եալ էին առ Մարթա եւ Մարիամ, զի
մխիթարեսցեն զնոսա վասն եղբօրն։
20 Մարթա իբրեւ լուաւ թէ Յիսուս գայ,
ընդ առաջ գնաց նորա, բայց Մարիամ
21 նստէր անդէն ի տան։ Ասէ Մարթա
ցՅիսուս, Տէր, եթէ աստ լեալ էիր,
22 եղբայրն իմ չէր մեռեալ. Այլ եւ արդ
գիտեմ եթէ զոր ինչ խնդրեսցես յԱս-
23 տուծոյ՝ տացէ քեզ Աստուած։ Ասէ
ցնա Յիսուս, Յարիցէ եղբայրն քո։
24 Ասէ ցնա Մարթա, Գիտեմ զի յարիցէ
25 ի յարութեան՝ յաւուրն յետնում։ Ասէ
ցնա Յիսուս, Ես իսկ եմ յարութիւն
եւ կեանք. որ հաւատայ յիս, թէպէտ
26 եւ մեռանի, կեցցէ. Եւ ամենայն որ
կենդանի է եւ հաւատայ յիս՝ մի՛ մեռ-
ցի յաւիտեան. հաւատա՞ս այսմիկ։
27 Ասէ ցնա, Այո, Տէր, ես հաւատացի
եթէ դու ես Քրիստոսն, Որդի Աստու-
28 ծոյ, որ յաշխարհ գալոց էիր։ Եւ զայս
իբրեւ ասաց, գնաց եւ կոչեաց զՄա-
րիամ, զքոյր իւր, լռելեայն եւ ասէ,
Վարդապետն եկեալ է եւ կոչէ զքեզ։
29 Նա իբրեւ լուաւ, յարեաւ վաղվաղակի
30 եւ եկն առ նա։ Չեւ եւս էր եկեալ
Յիսուս ի գեղն, այլ էր անդէն ի տեղ-
ւոջն ուր ընդ առաջ եղեւ նմա Մար-
31 թա։ Իսկ Հրեայքն որ էին ընդ նմա
ի տան անդ եւ մխիթարէին զնա, իբ-
րեւ տեսին զՄարիամ թէ յարեաւ վաղ-
վաղակի եւ գնաց, գնացին եւ նոքա
զհետ նորա, համարէին թէ ի գերեզ-
32 մանն երթայ զի լացցէ անդ։ Իսկ Մա-
րիամ իբրեւ եկն ուր էրն Յիսուս եւ
ետես զնա, անկաւ առ ոտս նորա եւ
ասէ, Տէր, եթէ աստ էիր գոլեալ,
33 ոչ էր մեռեալ եղբայրն իմ։ Յիսուս
իբրեւ ետես զնա զի լայր, եւ որ ընդ
նմայն էին Հրեայքն՝ լային, խռովեցաւ
34 յոգի իւր իբրեւ զայրացեալ, Եւ ասէ,
Ո՞ւր եդիք զնա. ասեն ցնա, Տէր,

¹Ոմանք, հաւատասջիք
²Բազումք յաւելուն, արդարեւ
³Ի Յունէն պակասէ

35 եկ եւ տես ։ Եւ արտասուեաց Յիսուս ։
36 Ասէին Հրեայքն, Տեսէք, որչափ սիրէր
37 զնա ։ Կէսքն ի նոցանէ ասէին, Ո՞չ
կարէր սա, որ եբաց զաչս կուրին,
38 առնել զի եւ սա մի՛ մեռցի ։ Յիսուս
դարձեալ զայրացեալ ընդ միտս իւր,
գայ ի գերեզմանն . եւ էր այր մի, եւ
39 վէմ մի եդեալ ի վերայ նորա ։ Եւ ասէ
Յիսուս, Ի բաց արարէք զվէմդ ։ Ասէ
ցնա Մարթա, քոյր մեռելոյն, Տէր,
արդ հոտեալ իցէ, քանզի չորեքօրեայ
40 է ։ Ասէ ցնա Յիսուս, Ո՞չ ասացի քեզ,
եթէ հաւատասցես, տեսցես զփառսն
41 Աստուծոյ ։ Եւ իբրեւ ի վեր առին
[1]զվէմն, Յիսուս ամբարձ զաչս իւր
ի վեր եւ ասէ, Հայր, գոհանամ զքէն
42 զի լուար ինձ ։ Եւ ես գիտէի զի յա-
մենայն ժամ լսես ինձ . այլ վասն ժո-
ղովրդեանս որ շուրջ կան՝ [2]առնեմ,
զի հաւատասցեն թէ դու առաքեցեր
43 զիս ։ Զայս իբրեւ ասաց, ի ձայն մեծ
աղաղակեաց եւ ասէ, Ղազարէ, արի
44 եկ արտաքս ։ Եւ ել մեռեալն ոտիւք
կապեալովք եւ ձեռօքն երիզափոքօք եւ
երեսօքն վարշամակապատօք . եւ ասէ
ցնոսա Յիսուս, Լուծէք զդա եւ թո-
ղէք երթալ ։
45 Բազումք ի Հրէիցն որ եկեալ էին
առ [3]Մարեմանս, իբրեւ տեսին զոր [4]ա-
46 րարն՝ հաւատացին ի նա ։ Եւ ոմանք
ի նոցանէ գնացին առ փարիսեցիսն,
պատմեցին նոցա զոր արարն Յիսուս ։
47 ՁՁ․ Ժողովեցին քահանայապետքն
եւ փարիսեցիքն ատեան, եւ ասեն,
Զի՞նչ արասցուք, զի այրն այն բա-
48 զում նշանս առնէ ։ Եթէ թողումք զնա
այնպէս, ամենեքին հաւատան ի նա .
եւ գայցեն Հռոմք եւ բառնայցեն
49 զազգս մեր եւ զտեղի ։ Մի ոմն ի նո-
ցանէ, անուն Կայիափա, որ քահա-
նայապետ էր տարւոյն այնորիկ, ասէ
50 ցնոսա, Դուք ոչինչ գիտէք, Եւ ոչ
բնաւ խորհել իսկ, թէ լաւ է մեզ զի
այր մի մեռանիցի ի վերայ ժողովր-
դեանս, եւ մի՛ ամենայն ազգս կորի-
51 ցէ ։ Զայս ոչ յանձնէ ինչ ասաց, այլ
զի քահանայապետ էր տարւոյն այնո-
րիկ, մարգարէացաւ եթէ մեռանելոց
52 էր Յիսուս ի վերայ ազգին . Եւ ոչ ի
վերայ ազգին միայն, այլ զի եւ զոր-
դիսն Աստուծոյ զցրուեալսն ժողովես-
ցէ ի մի ։
53 Ապա յայնմ օրէ խորհուրդ արարին
54 զի սպանցեն զնա ։ Եւ Յիսուս այնու-
հետեւ ոչ եթէ համարձակ շրջէր ի մէջ
Հրէիցն, այլ գնաց անտի յերկիր մի
որ մերձ էր յանապատ, ի քաղաք մի
որում անուն էր Եփրայիմ, եւ անդ
լինէր աշակերտօքն հանդերձ ։
55 ՁԷ․ Եւ էր մերձ զատիկն Հրէից,
եւ բազումք ելին յԵրուսաղէմ ի գա-
ւառէ անտի յառաջագոյն քան զզա-
տիկն, զի սրբեսցեն զանձինս իւրեանց ։
56 Խնդրէին զՅիսուս, եւ ասէին ընդ մի-
մեանս մինչ կային ի տաճարին, Զի՞րդ
թուի ձեզ, եթէ ո՞չ գայցէ ի տօն այսր ։
Պատուէր տուեալ էր քահանայապե-
տիցն եւ փարիսեցւոց, զի թէ ոք գի-
տասցէ թէ ուր է, ցուցակեսցէ զնմա-
նէ զի կալցին զնա ։

ԳԼ․ ԺԲ

1 Իսկ Յիսուս վեց աւուրբ յառաջ քան
զզատիկն եկն ի Բեթանիա, ուր էր
Ղազար մեռեալն, զոր յարոյցն ի մե-
2 ռելոց ։ Եւ արարին անդ նմա ընթրիս,
եւ ի սպասու կայր Մարթա, եւ Ղա-
3 զար մի էր ի բազմելոց ընդ նմա ։ Իսկ
Մարեմայ առեալ լիտր մի իւղոյ նար-
դեան ազնուի մեծագնոյ, օծ զոտսն
Յիսուսի, եւ հերօքն իւրովք մաքրէր
զոտս նորա . եւ տունն լի եղեւ ի հո-
4 տոյ իւղոյն ։ Ասէ մի ոմն յաշակերտաց
անտի, Յուդա Իսկարիովտացի, որ
5 մատնելոցն էր զնա, Ընդէ՞ր ոչ եւղդ
այդ վաճառեցաւ երեք հարիւր դենա-
6 րի եւ տուաւ աղքատաց ։ Զայս ասաց,
ոչ զի զաղքատաց ինչ փոյթ էր նմա,
այլ զի գող էր եւ զարկղն ինքն ունէր,
7 եւ որ ինչ անկանէրն՝ նա կրէր ։ Ասէ
Յիսուս, Թոյլ տուր դմա, զի յօրն պա-
8 տանաց իմոց [5]պահեսցէ զայդ . Զաղ-
քատս յամենայն ժամ ընդ ձեզ ունիք,
զիս ոչ հանապազ ընդ ձեզ ունիք ։
9 Իբրեւ գիտաց ժողովուրդ բազում
ի Հրէիցն թէ անդ է, եկին, ոչ միայն
վասն Յիսուսի, այլ զի եւ զՂազար

[1] Ոմանք, զվէմն ուր դնէր մեռեալն
[2] Յոմն, ասացի
[3] Յոմն, Մարիամ
[4] Ոմանք, արարն Յիսուս
[5] Ոմանք, պահեաց

10 տեսցեն, զոր յարոյցն ի մեռելոց։ Խոր-
հուրդ արարին քահանայապետքն, զի
11 եւ զՂազար սպանցեն. Քանզի բա-
զումք ի Հրէից [1]երթային եւ հաւա-
տային ի Յիսուս։
12 ՃԱ. Ի վաղիւ անդր ժողովուրդ բա-
զում որ եկեալ էր ի տօնն, իբրեւ լուան
13 եթէ գայ Յիսուս յԵրուսաղէմ, Առին
ոստս արմաւենեաց եւ ելին ընդ առաջ
նորա, աղաղակէին եւ ասէին, Ովսան-
նա, օրհնեալ որ գայ յանուն Տեառն,
14 թագաւորդ Իսրայելի։ Եւ գտեալ Յի-
սուսի էշ մի, նստաւ ի վերայ նորա,
15 որպէս եւ գրեալ է, Մի՛ երկնչիր,
դուստր Սիովնի, ահաւասիկ թագա-
ւոր քո գայ նստեալ ի վերայ յաւանակի
16 իշոյ։ Եւ զայն ինչ ոչ գիտացին աշա-
կերտքն նորա զառաջինն, այլ յորժամ
փառաւորեցաւ Յիսուս, յայնժամ յի-
շեցին եթէ այն էր որ գրեալն էր վասն
17 նորա, եւ զայն արարին նմա։ Եւ ժո-
ղովուրդն վկայէր որ էր ընդ նմա, եթէ
զՂազար կոչեաց եւեթ ի գերեզմանէն,
18 եւ յարոյց զնա ի մեռելոց։ Եւ վասն
այնորիկ ընդ առաջ ելեւ նմա ժողո-
վուրդն, զի լուան եթէ զայն նշանս
19 արարեալ էր նորա։ Իսկ փարիսեցիքն
ասէին ընդ միմեանս, Տեսանէ՞ք զի
ոչինչ օգտիք. ահաւասիկ աշխարհ ա-
մենայն զկնի նորա գնայ։
20 Էին անդ ոմանք եւ հեթանոսք յե-
լելոցն անդր, զի երկիր պագանիցեն
21 ի տօնին։ Նոքա մատեան առ Փիլիպ-
պոս որ ի Բեթսայիդայ Գալիլեացւոցն
էր, աղաչէին զնա եւ ասէին, Տէր,
22 կամիմք զՅիսուս տեսանել։ Գայ Փի-
լիպպոս եւ ասէ ցԱնդրէաս, Անդրէաս
23 եւ Փիլիպպոս ասեն ցՅիսուս։ Եւ Յի-
սուս պատասխանի ետ նոցա եւ ասէ,
Եհաս ժամ զի փառաւորեսցի Որդի
մարդոյ։
24 ՃԲ. Ամէն ամէն ասեմ ձեզ, Եթէ ոչ
հատն ցորենոյ անկեալ յերկիր մեռա-
նիցի, ինքն միայն կայ. ապա եթէ մե-
25 ռանիցի, բազում արդիւնս առնէ։ Որ
սիրէ զանձն իւր՝ [2]արձակէ զնա. եւ որ
ատեայ զանձն իւր յաշխարհիս յայսմիկ՝
ի կեանսն յաւիտենականս պահեսցէ
26 զնա։ Եթէ ոք զիս պաշտիցէ, զկնի իմ
եկեսցէ. եւ ուր եսն եմ, անդ եւ պաշ-
տօնեայն իմ եկեսցէ. եթէ ոք զիս պաշ-
տիցէ, պատուեսցէ զնա Հայրն իմ։
27 ՃԳ. Բայց այժմ անձն իմ խռովեալ է.
եւ զի՞նչ ասացից, եթէ, Հայր, ապ-
րեցո զիս ի ժամէ աստի յայսմանէ. այլ
28 վասն այնորիկ եկի ի ժամս յայս։ Հայր,
փառաւորեա զանուն քո։ Եկն բարբառ
յերկնից, Ե՛ւ փառաւոր արարի, ե՛ւ
29 դարձեալ փառաւոր արարից։ Եւ ժո-
ղովուրդն որ կայր եւ լսէր, ասէին՝
Որոտումն լինել. կէսքն ասէին, Հրեշ-
30 տակ խօսեցաւ ընդ նմա։ Պատասխանի
ետ Յիսուս եւ ասէ, Ոչ վասն իմ ինչ
եկն բարբառս այս, այլ վասն ձեր։
31 Այժմիկ դատաստան է աշխարհիս այ-
սորիկ, այժմիկ իշխան աշխարհիս այ-
32 սորիկ ընկեսցի արտաքս։ Եւ ես յոր-
ժամ բարձրացայց յերկրէ, զամենեսին
33 ձգեցից առ իս։ Զայս ասէր նշանա-
կեալ թէ որով մահու մեռանելոց իցէ։
34 Պատասխանի ետ նմա ժողովուրդն,
Մեք լուաք յօրինաց եթէ Քրիստոսն
յաւիտեան կայ, եւ դու զիա՞րդ ասես
թէ Պարտ է բարձրանալ Որդւոյ մար-
35 դոյ. ո՞վ է այն Որդին մարդոյ։ Ասէ
ցնոսա Յիսուս, Փոքր մեւս եւս ժա-
մանակ լոյս ընդ ձեզ է. գնացէք մինչ-
դեռ զլոյսն ունիք, զի մի՛ խաւար ձեզ
հասցէ. զի որ գնայ ի խաւարի՝ ոչ գիտէ
36 յո երթայ։ Մինչդեռ զլոյսն ընդ ձեզ
ունիք, հաւատացէք ի լոյսն, զի որդիք
լուսոյ եղիջիք։ Զայս խօսեցաւ Յիսուս,
եւ չոգաւ թաքեաւ ի նոցանէ։
37 Եւ այնչափ նշանս արարեալ էր ա-
ռաջի նոցա, եւ նոքա ոչ հաւատային
38 ի նա. Զի լցցի բանն Եսայեայ մար-
գարէի զոր ասացն, Տէր, ո՞ հաւատաց
ի լուր մեր, եւ բազուկ Տեառն ո՞ւմ
39 յայտնեցաւ։ Վասն այնորիկ ոչ կարէին
հաւատալ, զի միւսանգամ ասէ Եսայի,
40 Թէ Կուրացոյց զաչս նոցա եւ ապշե-
ցոյց զսիրտս նոցա, զի մի՛ տեսցեն
աչօք եւ իմասցին սրտիւք եւ դարձ-
41 ցին, եւ բժշկեցից զնոսա։ Զայս ասաց
Եսայի, զի ետես զփառս նորա եւ խօ-
42 սեցաւ վասն նորա։ Բայց սակայն եւ
յիշխանաց անտի բազումք հաւատացին
ի նա, այլ վասն փարիսեցւոցն ոչ յայտ-
նէին, զի մի՛ ի ժողովրդենէն ելանիցեն։
43 Քանզի սիրեցին զփառս մարդկան ա-
ռաւել քան զփառսն Աստուծոյ։

---

[1]Յ-յՆՆ, երթային վասն նորա
[2]Յ-յՆՆ, կորուսցէ. տե՛ս Մատթ. Ժ. 39։ ԺԶ. 25։

44 ԿԳ․ Եւ Յիսուս աղաղակէր եւ ասէր,
Որ հաւատայ յիս՝ ոչ հաւատայ յիս,
45 այլ յայն որ առաքեացն զիս։ Եւ որ
տեսանէ զիս՝ զայն տեսանէ որ առա-
46 քեացն զիս։ Ես լոյս յաշխարհ եկի, զի
ամենայն որ հաւատայ յիս՝ ի խաւարի
47 մի՛ մնասցէ։ Եւ եթէ ոք լուիցէ բանից
իմոց եւ ոչ պահեսցէ, ես ոչ դատիմ
զնա․ քանզի ոչ եկի թէ դատեցայց
զաշխարհ, այլ զի փրկեցից զաշխարհ։
48 Որ անարգէ զիս եւ ոչ ընդունի զբանս
իմ, գոյ որ դատի զնա․ բանն զոր ես
խօսեցայ, նա դատի զնա յաւուրն յետ-
49 նում։ Զի ես յանձնէ իմմէ ոչ խօսե-
ցայ, այլ որ առաքեացն զիս Հայր, նա
ետ ինձ պատուէր զինչ ասացից եւ
50 զինչ խօսեցայց։ Եւ գիտեմ եթէ պատ-
ուէրն այն կեանք են յաւիտենականք․
արդ զոր եսն խօսիմ, որպէս ասաց ինձ
Հայրն, այնպէս խօսիմ։

## ԳԼ․ ԺԳ

1 ԿԵ․ Յառաջագոյն քան զտօնն զատկի
գիտաց Յիսուս թէ հասեալ է ժամնո-
րա զի փոխեսցի յաշխարհէ աստի առ
Հայր, սիրեաց զիւրսն որ յաշխարհի
աստ էին, ի սպառ սիրեաց զնոսա։
2 Եւ ի լինել ընթրեացն (Սատանայի
իսկ արկեալ էր ի սիրտ, զի մատնեսցէ
զնա, Յուդայ Սիմովնի Իսկարիովտա-
3 ցւոյ) Գիտաց Յիսուս զի զամենայն ինչ
ետ Հայր ի ձեռս նորա, եւ թէ յԱս-
տուծոյ ել եւ առ Աստուած երթայ,
4 Յառնէ յընթրեաց անտի եւ դնէ զհան-
դերձսն, եւ առեալ զանջակ մի սփա-
5 ծաւ։ Եւ ապա առեալ ջուր արկ ի
կոնք, եւ սկսաւ լուանալ զոտս աշա-
կերտացն, եւ սրբէր զանջակաւն զոր
6 սփածեալ էր։ Գայ առ Սիմովն Պետրոս.
եւ նա ասէ ցնա, Տէր, դո՞ւ զիմ զոտս
7 լուանաս։ Պատասխանի ետ նմա Յի-
սուս եւ ասէ, Զոր ինչ ես գործեմ՝
դու այժմ ոչ գիտես․ բայց ապա գի-
8 տասջիր։ Ասէ ցնա Պետրոս, Ոչ լու-
ասցես զոտս իմ յաւիտեան․ պատաս-
խանի ետ նմա Յիսուս, Եթէ ոչ լուա-
ցից զքեզ, ոչ ունիս ընդ իս մասն։
9 Ասէ ցնա Սիմովն Պետրոս, Տէր, մի՛
միայն զոտս իմ, այլ եւ զձեռս եւ
10 զգլուխ։ Ասէ ցնա Յիսուս, Լուացե-
լոյն չէ ինչ պիտոյ, բայց զի զոտսն
լուանայցէ, քանզի ամենեւին սուրբ է․
եւ դուք սուրբ էք, այլ ոչ ամենեքին։
11 Զի գիտէր զայն որ մատնելոցն էր զնա․
վասն այնորիկ ասաց թէ Ոչ ամենեքին
12 սուրբ էք։ Եւ յորժամ լուաց զոտս
նոցա, ա՛ռ զհանդերձսն իւր եւ դար-
ձեալ բազմեցաւ, եւ ասէ ցնոսա, Գի-
13 տէ՞ք զինչ արարի ձեզ․ Դուք կոչէք
զիս Վարդապետ եւ Տէր, եւ բարւոք
14 ասէք, քանզի եմ իսկ։ Իսկ արդ եթէ
ես լուացի զոտս ձեր, Տէրս եւ Վար-
դապետս, եւ դուք պարտիք զմիմեանց
15 ոտս լուանալ։ Զի օրինակ մի ետու
ձեզ, զի որպէս ես ձեզ արարի, եւ
դուք առնիջիք։
16 ԿԶ․ Ամէն ամէն ասեմ ձեզ, Ոչ է
ծառայ մեծ քան զտէր իւր, եւ ոչ ա-
ռաքեալ՝ մեծ քան զայն որ առաքեացն
17 զնա։ Եթէ զայս գիտէք, երանելի եւս
18 էք, եթէ առնիցէք զայս։ Ոչ վասն ա-
մենեցուն ձեր ասեմ, զի ես գիտեմ
զորս ընտրեցից․ այլ զի լցցի գիրն թէ
Որ ուտէր ընդ իս հաց՝ արար ինձ խա-
19 բէութիւն։ Յայսմհետէ իսկ ասեմ ձեզ
մինչչեւ եղեալ, զի յորժամ լինիցի,
20 հաւատասջիք թէ ես եմ։ Ամէն ամէն
ասեմ ձեզ, Որ ընդունի զոր ոք ես ա-
ռաքեցից՝ զիս ընդունի․ եւ որ զիս ըն-
դունի՝ ընդունի զայն որ առաքեացն
զիս։
21 Զայս իբրեւ ասաց Յիսուս, խռովե-
ցաւ յոգի իւր, վկայեաց եւ ասէ, Ա-
մէն ամէն ասեմ ձեզ զի մի ոմն ի ձէնջ
22 մատնելոց է զիս։ Հայէին ընդ միմ-
եանս աշակերտքն տարակուսեալք թէ
23 զումէ՛ ասիցէ։ Եւ էր մի ոմն յաշա-
կերտացն բազմեալ առ Յիսուսիւ, զոր
24 սիրէրն Յիսուս։ Ակնարկէ նմա Սի-
մովն Պետրոս հարցանել, ո՛վ իցէ վասն
25 որոյ ասէն։ Եւ նա անկեալ զլանջօքն
26 Յիսուսի՝ ասէ ցնա, Տէր, ո՞վ է։ Պա-
տասխանի ետ Յիսուս եւ ասէ, Այն է,
որում ես թացից զպատառն եւ տաց․
եւ թացեալ զպատառն տայ [1]Յուդայի
27 Իսկարիովտացւոյ։ Եւ յետ պատառոյն
ապա եմուտ ի նա Սատանայ․ եւ ասէ
ցնա Յիսուս, Արդ որ զինչ առնելոց
28 ես՝ արա վաղվաղակի։ Եւ զայս ոչ ոք
իմացաւ ի բազմականաց անտի, թէ
29 առ ինչ ասաց ցնա։ Զի ոմանք հա-

[1]Բուղամն․ ցՅուդա Սիմովնի

մարէին թէ զի զարկղն ունէր Յուդա,
ասաց նմա Յիսուս, Գնեա ինչ որ պի-
տոյ իցէ մեզ ի տօնիս, եւ կամ, զի
30 աղքատաց ինչ տացէ ։ Իսկ նորա առ-
եալ զպատառն՝ ել արտաքս վաղվա-
ղակի, եւ էր գիշեր ։
31 ԻԷ. Եւ իբրեւ ել, ասէ Յիսուս,
Այժմ փառաւորեցաւ Որդի մարդոյ,
եւ Աստուած փառաւորեցաւ ի նմա ։
32 Զի եթէ Աստուած փառաւորեցաւ ի
նմա, եւ Աստուած փառաւորեսցէ զնա
յանձն իւր. եւ վաղվաղակի փառաւո-
33 րեսցէ զնա ։ Որդեակք իմ, փոքր ինչ
ժամանակ ընդ ձեզ եմ. խնդրիցէք զիս.
եւ որպէս ասացի ցՀրէայսն եթէ Ուր
եսն երթամ, դուք ոչ կարէք գալ, եւ
34 արդ ձեզ ասեմ ։ Պատուիրան նոր տամ
ձեզ, զի սիրիցէք զմիմեանս. որպէս
սիրեցի ես զձեզ, զի եւ դուք սիրես-
35 ջիք զմիմեանս ։ Յայսմ գիտասցեն ա-
մենեքեան եթէ իմ աշակերտք էք, եթէ
36 սիրիցէք զմիմեանս ։ Ասէ ցնա Սիմովն
Պետրոս, Տէր, յո՞ երթաս ։ Պատաս-
խանի ետ Յիսուս, Ուր եսն երթամ՝
դու ոչ կարես այժմ գալ զկնի իմ, բայց
37 ապա եկեսցես զկնի իմ ։ Ասէ ցնա Պետ-
րոս, Տէր, ընդէ՞ր ոչ կարիցեմ գալ
այժմ զկնի քո, արդէն զանձն իմ իսկ
38 եդից ի վերայ քո ։ Պատասխանի ետ
Յիսուս, Զա՞նձն քո դիցես ի վերայ
իմ. ամէն ամէն ասեմ քեզ, Զեւ իցէ
հաւու խօսեալ, մինչ դու երիցս ու-
րասցիս զիս ։

## ԳԼ. ԺԴ

1 Մի՛ խռովեսցին սիրտք ձեր. այլ հա-
ւատացէք յԱստուած եւ յիս հաւա-
2 տացէք ։ Ի տան Հօր իմոյ օթեվանք
բազում են. ապա թէ ոչ՝ ասացեալ էր
իմ ձեզ, [1]Եթէ երթամ, եւ պատրաս-
3 տեմ ձեզ տեղի ։ Եւ եթէ երթամ եւ
պատրաստեմ ձեզ տեղի, դարձեալ գամ
եւ առնում զձեզ առ իս. զի ուր եսն
4 իցեմ, եւ դուք անդ իցէք ։ Եւ ուր
երթամն՝ գիտիցէք, եւ զճանապարհն
գիտիցէք ։
5 Ասէ ցնա Թովմաս, Տէր, ոչ գի-
տեմք յո՛ երթաս, եւ զիա՞րդ զճանա-
6 պարհն կարասցուք գիտել ։ Ասէ ցնա
Յիսուս, Ես եմ ճանապարհն եւ ճըշ-
մարտութիւն եւ կեանք. ոչ ոք գայ
7 առ Հայր եթէ ոչ ինեւ ։ Եթէ զիս գի-
տէիք, ապա եւ զՀայր իմ գիտէիք,
եւ այսուհետեւ գիտասջիք զնա եւ
տեսէք զնա ։
8 Ասէ ցնա Փիլիպպոս, Տէր, ցոյց մեզ
9 զՀայր, եւ շատ է մեզ ։ Ասէ ցնա Յի-
սուս, Այսչափ ժամանակս ընդ ձեզ
եմ, եւ ո՞չ ծանեար զիս, Փիլիպպէ.
որ ետեսն զիս՝ ետես զՀայրն. եւ դու
զիա՞րդ ասես եթէ Ցոյց մեզ զՀայր ։
10 Ո՞չ հաւատաս եթէ ես ի Հայր եւ Հայր
յիս է. զբանս զոր ես խօսիմ ընդ ձեզ,
ոչ եթէ յանձնէ ինչ խօսիմ, այլ Հայրն
որ յիս բնակեալ է՝ նա գործէ զգործսն ։
11 [2]Հաւատա՞յք ինձ, եթէ ես ի Հայր եւ
Հայր յիս է. ապա թէ ոչ՝ գոնէ վասն
12 գործոցն հաւատացէք ինձ ։ Ամէն ա-
մէն ասեմ ձեզ թէ որ հաւատայն յիս,
զգործսն զոր ես գործեմ, եւ նա գոր-
ծեսցէ, եւ մեծամեծս եւս քան զնոյնս
գործեսցէ. զի ես առ Հայր երթամ ։
13 Եւ զոր ինչ խնդրիցէք յանուն իմ՝ ա-
րարից զայն, զի փառաւորեսցի Հայր
յՈրդի ։[3] ԿՁ
15 ԸԿ. Եթէ սիրէք զիս, զպատուի-
16 րանս իմ պահեսջիք ։ Եւ ես աղաչե-
ցից զՀայր, եւ այլ Մխիթարիչ տացէ
ձեզ, զի ընդ ձեզ բնակեսցէ ի յաւի-
17 տեան. Զհոգին ճշմարտութեան զոր
աշխարհս ոչ կարէ ընդունել, զի ոչ
տեսանէ զնա եւ ոչ ճանաչէ զնա. բայց
դուք ճանաչէք զնա, զի առ ձեզ բնա-
18 կեսցէ եւ ընդ ձեզ եղիցի ։ Ոչ թողից
19 զձեզ որբս, գամ առ ձեզ ։ Փոքր մեւս
եւս՝ եւ աշխարհս ոչ եւս տեսանէ զիս,
բայց դուք տեսանիցէք զիս, զի ես
կենդանի եմ, եւ դուք կենդանի լինի-
20 ջիք ։ Յայնմ աւուր գիտասջիք դուք,
զի ես ի Հօր իմում, եւ դուք յիս, եւ
21 ես ի ձեզ ։ Որ ունի զպատուիրանս իմ
եւ պահէ զնոսա՝ նա է որ սիրէ զիս.
եւ որ սիրէն զիս՝ սիրեսցի ի Հօրէ իմմէ.
եւ ես սիրեցից զնա, եւ երեւեցուցից
նմա զիս ։
22 Ասէ ցնա Յուդա (ոչ Իսկարիովտա-
ցին), Տէր, զի՞ եղեւ զի մեզ յայտնելոց
23 ես զքեզ եւ ոչ աշխարհի ։ Պատասխանի

[1] Ի բազումս՝ Քանզի. յոմանս պակաս

[2] Յոյնն, Հաւատացէք

[3] Բազումք յաւելուն, (14) Եթէ խնդրիցէք ինչ յանուն իմ՝ արարից զայն ։

եւ Յիսուս եւ ասէ ցնա, Եթէ ոք սիրէ
զիս, զբանն իմ պահեսցէ, եւ Հայր իմ
սիրեսցէ զնա. եւ առ նա եկեսցուք
24 եւ օթեվանս առ նմա արասցուք. Եւ
որ ոչն սիրէ զիս՝ զբանս իմ ոչ պահէ.
եւ բանն իմ զոր լսէք՝ ոչ է իմ, այլ
25 Հօրն որ առաքեացն զիս։ Զայս խօ-
սեցայ ընդ ձեզ, մինչ առ ձեզս եմ։
26 Իսկ Մխիթարիչն, Հոգին Սուրբ, զոր
առաքեսցէ Հայր յանուն իմ, նա ու-
սուսցէ ձեզ զամենայն, եւ յիշեցուսցէ
27 զամենայն զոր ինչ ասացի ձեզ։ Խա-
ղաղութիւն թողում ձեզ, զխաղաղու-
թիւն զիմ տամ ձեզ. ոչ որպէս աշ-
խարհս տայ, տամ ես ձեզ. մի՛ խռո-
վեսցին սիրտք ձեր եւ մի՛ զանգիտես-
28 ցեն։ Լուայք զի ասացի ես ձեզ թէ
Երթամ եւ գամ առ ձեզ. եթէ սիրէիք
զիս, ապա ուրախ լեալ էր ձեր եթէ
ես առ Հայր երթամ, զի Հայր իմ մեծ
29 է քան զիս։ Եւ այժմ ասացի ձեզ
մինչչեւ եղեալ, զի յորժամ լինիցի,
30 հաւատասջիք։ Ոչ եւս այլ շատ խօսե-
ցայց ընդ ձեզ. գայ իշխան աշխարհիս
31 այսորիկ եւ յիս ինչ ոչ գտանէ։ Այլ
զի ծանիցէ աշխարհ եթէ սիրեմ զՀայր.
եւ որպէս պատուիրեաց ինձ Հայր,
այնպէս առնեմ. օ՛ն արիք գնասցուք
աստի։

## Գլ. ԺԵ

1 Ես եմ որթն ճշմարիտ, եւ Հայր իմ
2 մշակ է։ Ամենայն ուռ որ յիս է եւ ոչ
բերէ պտուղ՝ կտրէ զնա. եւ ամենայն
որ բերէ պտուղ՝ սրբէ զնա, զի առա-
3 ւել եւս պտղաբեր լիցի։ Դուք արդէն
իսկ սուրբ էք վասն բանին զոր խօսե-
4 ցայ ընդ ձեզ։ Կացէք յիս եւ ես ի ձեզ.
որպէս ուռն ոչ կարէ պտուղ բերել
յանձնէ իւրմէ, եթէ չիցէ հաստատեալ
յորթն, նոյնպէս եւ դուք եթէ ոչ յիս
5 հաստատեալ իցէք։ Ես եմ որթ եւ դուք
ուռ. որ հաստատեալ է յիս եւ ես ի նա,
նա բերէ պտուղ յոյժ. զի առանց իմ
6 ոչինչ կարէք առնել։ Եթէ ոք ոչ է
հաստատեալ յիս, ել նա արտաքս իբ-
րեւ զուռն եւ ցամաքեցաւ, եւ ժողո-
վեն զնա եւ ի հուր արկանեն, եւ այրի։
7 Եթէ կայցէք յիս եւ բանք իմ ի ձեզ
կայցեն, զոր ինչ կամիցիք՝ խնդրես-
8 ջիք, եւ լինիցի ձեզ։ Ցայսմիկ փառա-
ւորեցաւ Հայր իմ, զի պտուղ յոյժ բե-
րիցէք, եւ եղիջիք իմ աշակերտք։
9 Որպէս սիրեաց զիս Հայր, եւ ես
սիրեցի զձեզ. հաստատուն կացէք ի
10 սէր իմ։ Եթէ պահիցէք զպատուիրանս
իմ, կայջիք ի սէր իմ. որպէս ես
զպատուիրանս Հօր իմոյ պահեցի, եւ
11 կամ ի սէր նորա։ Զայս խօսեցայ ընդ
ձեզ, զի ուրախութիւնն իմ ի ձեզ իցէ,
եւ ձեր ուրախութիւնն լցեալ եղիցի։
12 Այս է պատուէր իմ, զի սիրեսջիք
զմիմեանս, որպէս եւ ես սիրեցի զձեզ։
13 Մեծ եւս քան զայս սէր ոչ ոք ունի,
եթէ զանձն իւր դիցէ ի վերայ բարե-
14 կամաց իւրոց։ Դուք բարեկամք էք
իմ, եթէ առնիցէք զոր ես պատուի-
15 րեմ ձեզ։ Ոչ եւս կոչեմ զձեզ ծառայս,
զի ծառայն ոչ գիտէ զինչ գործէ տէրն
նորա. այլ զձեզ կոչեցի բարեկամս,
զի զամենայն զոր լուայ ի Հօրէ իմմէ՝
16 ծանուցի ձեզ։ Ոչ եթէ դուք ընտրե-
ցէք զիս, այլ ես ընտրեցի զձեզ, եւ եդի
զձեզ զի դուք երթայցէք եւ պտղա-
բերք լինիցիք, եւ պտուղն ձեր կայ-
ցէ, եւ զոր ինչ խնդրիցէք ի Հօրէ իմմէ
17 յանուն իմ՝ տացէ ձեզ։ Զայս պատ-
ուիրեմ ձեզ զի սիրեսջիք զմիմեանս։
18 Եթէ աշխարհ զձեզ ատեայ, գիտաս-
19 ջիք զի նախ զիս ատեաց։ Եթէ յաշ-
խարհէ աստի էիք, աշխարհ զիւրն սի-
րէր արդեւք. բայց զի չէք յաշխարհէ,
այլ ես ընտրեցի զձեզ յաշխարհէ, վասն
20 այնորիկ ատեայ զձեզ աշխարհ։ Յիշե-
ցէք զբանն զոր ասացի ձեզ, թէ Ոչ է
ծառայ մեծ քան զտէր իւր. եթէ զիս
հալածեցին, ապա եւ զձեզ հալածես-
ցեն. եթէ զբանն իմ պահեցին, ապա
21 եւ զձերն պահեսցեն։ Այլ զնոյնս ա-
րասցեն ընդ ձեզ վասն անուան իմոյ,
զի ոչ գիտեն զայն որ առաքեացն զիս։
22 Իմ եթէ չէր եկեալ եւ խօսեցեալ ընդ
նոսա, մեղ ինչ ոչ գոյր նոցա. բայց
արդ չիք ինչ պատճառք վասն մեղաց
23 իւրեանց։ Որ զիս ատեայ, եւ զՀայրն
24 իմ ատեայ։ Եթէ զգործսն չէր գործեալ
ի նոսա, զոր ոչ այլ ոք գործեաց, մեղ
ինչ ոչ գոյր նոցա, բայց արդ տեսին
եւ ատեցին ե՛ւ զիս ե՛ւ զՀայր իմ։
25 Այլ զի լցցի բանն որ յօրէնս նոցա
գրեալ է թէ՝ Ատեցին զիս տարապար-
26 տուց։ Բայց յորժամ եկեսցէ Մխիթա-
րիչն զոր ես առաքեցից ձեզ ի Հօրէ,

զՀոգին ճշմարտութեան որ ի Հօրէ
27 ելանէ, նա վկայեսցէ վասն իմ. Եւ
դուք վկայէք, զի ի սկզբանէ ընդ իս
էք:

## Գլ. ԺԶ

1 Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի մի՛ գայ-
2 թակղեսջիք: Ի ժողովրդոց իւրեանց
հանիցեն զձեզ. այլ եկեսցէ ժամանակ
զի ամենայն որ սպանանիցէ զձեզ՝ հա-
մարիցի պաշտօն մատուցանել Աստու-
3 ծոյ: Եւ զայն արասցեն ընդ ձեզ,
քանզի ոչ ծանեան զՀայր եւ ոչ զիս:
4 Այլ եւ զայս խօսեցայ ընդ ձեզ, զի յոր-
ժամ եկեսցէ ժամանակ, յիշիցէք թէ
ես ասացի ձեզ. զայս ի սկզբանէ ոչ
ասացի ձեզ, քանզի ընդ ձեզ էի:
5 Բայց արդ երթամ ես առ առաքիչն
իմ, եւ ոչ ոք ի ձէնջ հարցանէ զիս թէ
6 Յո՞ երթաս: Այլ զի զայս խօսեցայ ընդ
ձեզ, տրտմութիւն ելից զսիրտս ձեր:
7 Այլ ես զճշմարիտն ասեմ ձեզ, լաւ է
ձեզ եթէ ես երթամ. զի եթէ ես ոչ
երթայց, Մխիթարիչն ոչ եկեսցէ առ
ձեզ. ապա եթէ երթամ, առաքեցից
8 զնա առ ձեզ: Եւ նա եկեալ՝ յանդի-
մանեսցէ զաշխարհ վասն մեղաց եւ
վասն արդարութեան եւ վասն դա-
9 տաստանի: Վասն մեղաց՝ զի ոչ հա-
10 ւատան յիս. Վասն արդարութեան՝ զի
առ Հայր իմ երթամ, եւ ոչ եւս տե-
11 սանէք զիս. Վասն դատաստանի՝ զի
իշխան աշխարհիս այսորիկ դատապար-
12 տեալ է: Եւս բազում ինչ ունիմ ասել
ձեզ, այլ ոչ կարէք հանդարտել այժ-
13 միկ: Յորժամ եկեսցէ նա, Հոգին ճըշ-
մարտութեան, առաջնորդեսցէ ձեզ ա-
մենայն ճշմարտութեամբ. զի ոչ եթէ
յանձնէ ինչ խօսիցի, այլ զոր լսիցէ՝
խօսիցի, եւ զգալոցն պատմեսցէ ձեզ:
14 Նա զիս փառաւորեսցէ, զի յիմմէ անտի
15 առնուցու եւ պատմեսցէ ձեզ: Զամե-
նայն ինչ զոր ունի Հայր՝ իմ է. վասն
այնորիկ ասացի ձեզ թէ յիմմէ անտի
16 առնուցու եւ պատմեսցէ ձեզ: Փոքր
մի՝ եւ ոչ եւս տեսանէք զիս, եւ ապա
սակաւիկ մի՝ եւ տեսանիցէք զիս, եւ
ես երթամ առ Հայր:
17 Ասէին ոմանք յաշակերտաց անտի
ցմիմեանս, Զի՞նչ է այս զոր ասէս ցմեզ
թէ Փոքր մի՝ եւ ոչ տեսանէք զիս, եւ
դարձեալ սակաւիկ մի՝ եւ տեսանիցէք
18 զիս, եւ թէ Ես առ Հայր երթամ: Եւ
ասէին, Զի՞նչ իցէ այն Փոքր մեւս
19 եւս. չգիտեմք զի՛նչ խօսի: Գիտաց
Յիսուս եթէ կամէին զնա հարցանել,
եւ ասէ ցնոսա, Վասն այդորի՞կ խնդրէք
ընդ միմեանս զի ասացի թէ Փոքր մի՝
եւ ոչ տեսանէք զիս, եւ դարձեալ սա-
կաւիկ մեւս եւս՝ եւ տեսանիցէք զիս:
20 Ամէն ամէն ասեմ ձեզ, զի լայջիք եւ
ողբասջիք դուք, եւ աշխարհ խնդաս-
ցէ. դուք տրտմեսջիք, այլ տրտմու-
21 թիւն ձեր յուրախութիւն եղիցի: Կին
յորժամ ծնանիցի, տրտմութիւն է նմա,
զի հասեալ է ժամ նորա. այլ յորժամ
ծնցի զմանուկն, ոչ եւս յիշէ զնեղու-
թիւնն վասն խնդութեանն, զի ծնաւ
22 մարդ յաշխարհ: Եւ դուք այժմ տրտ-
մութիւն ունիք, այլ դարձեալ տեսից
զձեզ, եւ ուրախ լիցին սիրտք ձեր.
եւ զուրախութիւնն ձեր ոչ ոք հանիցէ
23 ի ձէնջ: Եւ յայնմ աւուր զիս ինչ ոչ
հարցանիցէք: Ամէն ամէն ասեմ ձեզ,
զի զոր ինչ խնդրիցէք ի Հօրէ իմմէ յա-
24 նուն իմ՝ տացէ ձեզ: Մինչեւ ցայժմ
ոչինչ խնդրեցէք յանուն իմ. խնդրե-
ցէք եւ առնուցուք, զի ուրախու-
25 թիւնն ձեր լցեալ եղիցի: Զայս առա-
կօք խօսեցայ ընդ ձեզ. եկեսցէ ժա-
մանակ յորժամ ոչ եւս առակօք խօսե-
ցայց ընդ ձեզ, այլ յայտնապէս զՀօրէ
26 պատմեցից ձեզ: Յայնմ աւուր խնդ-
րեսջիք յանուն իմ. եւ ոչ ասեմ ձեզ
եթէ ես աղաչեցից զՀայր վասն ձեր.
27 Զի ինքն իսկ Հայր սիրէ զձեզ, զի
դուք զիս սիրեցէք, եւ հաւատացէք
28 եթէ ես յԱստուծոյ ելի: Ելի ի Հօրէ
եւ եկի յաշխարհ, դարձեալ թողում
զաշխարհ եւ երթամ առ Հայր:
29 Ասեն ցնա աշակերտքն, Ահա արդ
յայտնութեամբ խօսիս, եւ առակ եւ
30 ոչ մի ինչ ասես: Այժմիկ գիտեմք եթէ
գիտես զամենայն, եւ ոչինչ պիտոյ է
եթէ ոք հարցանիցէ զքեզ. յայսմիկ հա-
31 ւատամք եթէ յԱստուծոյ ելեր: Պա-
տասխանի ետ նոցա Յիսուս եւ ասէ,
32 Այժմ հաւատա՞յք. Ահա եկեսցէ ժամ
եւ եկեալ իսկ է, զի ցրուեսջիք իւ-
րաքանչիւր տեղիս, եւ զիս միայն թո-
ղուցուք. եւ չեմ միայն, զի Հայր ընդ
33 իս է: Զայս խօսեցայ ընդ ձեզ, զի ընդ
իս խաղաղութիւն ունիցիք. յաշխարհի

ասա նեղութիւն ունիցիք, այլ քաջա-
լերեցարուք, զի ես յաղթեցի աշխարհի։

## Գլ. ԺԷ

1 Զայս իբրեւ խօսեցաւ Յիսուս, ամ-
բարձ զաչս իւր յերկինս եւ ասէ, Հայր,
հասեալ է ժամ, փառաւորեա զՈրդի
քո, զի եւ Որդի քո փառաւորեսցէ
2 զքեզ։ Որպէս ետուր նմա իշխանու-
թիւն ամենայն մարմնոյ, զի ամենայնի
զոր ետուր նմա՝ տացէ զկեանսն յա-
3 ւիտենականս։ Այս են յաւիտենական
կեանք, զի ծանիցեն զքեզ միայն ճշ-
մարիտ Աստուած, եւ զոր առաքեցեր՝
4 զՅիսուս Քրիստոս։ Ես զքեզ փառա-
ւորեցի յերկրի. զգործն կատարեցի
5 զոր ետուր ցիս զի արարից։ Եւ այժմ
փառաւորեա զիս, Հայր, առ ի քէն
փառօքն զոր ունէի յառաջ քան զլինելն
6 աշխարհի առ ի քէն։ Յայտնեցի զա-
նուն քո մարդկան զորս ետուր ինձ
յաշխարհէ. քո էին, եւ ինձ ետուր
7 զնոսա, եւ զբանն քո պահեցին։ Արդ
գիտացին եթէ զամենայն ինչ զոր ե-
8 տուր [1]ինձ՝ ետու նոցա. Եւ նոքա ըն-
կալան եւ ծանեան ճշմարտութեամբ
թէ առ ի քէն ելի, եւ հաւատացին
9 եթէ դու առաքեցեր զիս։ Արդ ես վասն
նոցա աղաչեմ. եւ ոչ վասն աշխարհի
աղաչեմ, այլ վասն նոցա զորս ետուրն
10 ինձ, զի քո են։ Եւ որ ինչ իմ է՝ ա-
մենայն քո է. եւ որ ինչ քո է՝ այն
իմ է, եւ փառաւորեալ եմ ի նոսա։
11 Եւ ես ոչ եւս եմ յաշխարհի, եւ նոքա
յաշխարհի են, եւ ես առ քեզ գամ.
Հայր սուրբ, պահեա զնոսա յանուն
քո, [2]որով ետուրն ինձ, զի եղիցին
12 մի, որպէս եւ մեք մի եմք։ Մինչ էի
[3]յաշխարհի ընդ նոսա, ես պահէի զնո-
սա յանուն քո, [2]որով ետուրն ինձ,
եւ պահեցի. եւ ոչ ոք ի նոցանէ կոր-
եաւ, բայց որդին կորստեան, զի գիրն
13 լցցի։ Բայց արդ առ քեզ գամ, եւ զայս
խօսիմ յաշխարհի, զի ունիցին զուրա-
խութիւնն իմ լիով յանձինս իւրեանց։
14 Ես ետու նոցա զբանն քո, եւ աշ-
խարհս ատեաց զնոսա. զի չեն յաշ-
խարհէ, որպէս եւ ես չեմ յաշխարհէ։
15 Ոչ զայս աղաչեմ զի բարձցես զնոսա
յաշխարհէ, այլ զի պահեսցես զնոսա
16 ի չարէ։ Յաշխարհէ աստի չեն, որպէս
17 եւ ես չեմ յաշխարհէ։ Սուրբ արա
զնոսա ճշմարտութեամբ քով, զի քո
18 բանդ ճշմարտութիւն է։ Որպէս զիս
առաքեցեր յաշխարհ, եւ ես առաքեցի
19 զնոսա յաշխարհ։ Եւ ի վերայ նոցա ես
սուրբ առնեմ զանձն իմ, զի եղիցին
եւ նոքա սրբեալք ճշմարտութեամբ։
20 Այլ ոչ վասն նոցա միայն աղաչեմ, այլ
եւ վասն ամենայն հաւատացելոց բա-
21 նիւն նոցա յիս. Զի ամենեքին մի
իցեն, որպէս դու, Հայր, յիս, եւ ես
ի քեզ, զի եւ նոքա ի մեզ իցեն. զի
եւ աշխարհ հաւատասցէ եթէ դու ա-
22 ռաքեցեր զիս։ Եւ ես զփառսն զոր
ետուր ինձ՝ ետու նոցա, զի իցեն մի,
23 որպէս եւ մեք մի եմք։ Ես ի նոսա,
եւ դու յիս, զի եղիցին կատարեալք
ի մի. եւ գիտասցէ աշխարհ եթէ դու
առաքեցեր զիս. եւ սիրեցի զնոսա,
24 որպէս դու զիս սիրեցեր։ Հայր, զորս
ետուրն ինձ, կամիմ զի ուր եմն ես,
եւ նոքա իցեն ընդ իս, զի տեսանիցեն
զփառսն զիմ զոր ետուրն ցիս. զի սի-
րեցեր զիս յառաջ քան զլինելն աշ-
25 խարհի։ Հայր արդար, եւ աշխարհ
զքեզ ոչ ծանեաւ, այլ ես զքեզ ծա-
նեայ. եւ նոքա ծանեան եթէ դու ա-
26 ռաքեցեր զիս։ Եւ ծանուցի նոցա զա-
նուն քո եւ ծանուցից. զի սէրն զոր
սիրեցեր զիս՝ ի նոսա լիցէ, եւ ես ի
նոսա։

## Գլ. ԺԸ

1 Զայս իբրեւ ասաց Յիսուս, ել աշա-
կերտօքն հանդերձ յայնկոյս ձորոյն
Կեդրոնի, ուր էր պարտէզ, յոր ե-
2 մուտ ինքն եւ աշակերտքն իւր։ Գի-
տէր եւ Յուդա որ զնայն մատնելոց
էր՝ զտեղին, զի բազում անգամ ժո-
ղովեալ էր անդր Յիսուսի աշակեր-
3 տօքն հանդերձ։ Եւ Յուդայի առեալ
ընդ իւր զգունդն, եւ ի քահանայա-
պետիցն եւ ի փարիսեցւոց սպասա-
ւորս, գայ անդր ջահիւք եւ լապտե-
4 րօք եւ զինուք։ Իսկ Յիսուս իբրեւ
ետես զայն ամենայն եկեալ ի վերայ
նորա, ել եւ ասէ ցնոսա, Զո՞ խնդրէք։

[1] Յոյնն, Ինձ՝ առ ի քէն են. (8) Զի զբանսն զորս ետուր ինձ՝ ետու նոցա. և

[2] Բազումք, զոր, այլք՝ զորս

[3] ի Բազումս պակասի

5 Պատասխանի ետուն նմա, ԶՅիսուս
Նազովրեցի։ Ասէ ցնոսա Յիսուս, Ես
եմ։ Կայր ընդ նոսա եւ Յուդա որ
6 մատնէրն զնա։ Իբրեւ ասաց թէ Ես
եմ, յետս յետս չոգան եւ զարկան
7 զգետնի։ Դարձեալ եհարց զնոսա, Զո՞
խնդրէք։ Եւ նոքա ասեն, ԶՅիսուս
8 Նազովրեցի։ Պատասխանի ետ նոցա
Յիսուս, Ասացի ձեզ թէ Ես եմ. արդ
եթէ զիս խնդրէք, թոյլ տուք դոցա
9 երթալ։ Զի լցցի բանն զոր ասաց թէ
Զորս ետուրն ցիս՝ ոչ կորուսից ի նո-
10 ցանէ եւ ոչ զոք։ Իսկ Սիմոն Պետ-
րոս քանզի ունէր սուր, ձգեաց զնա,
եհար զքահանայապետին ծառայ, եւ
ի բաց առ զունկն նորա զաջոյ. եւ էր
11 անուն ծառային Մաղքոս։ Ասէ Յիսուս
ցՊետրոս, Արկ զսուրդ անդրէն ի պա-
տեանս իւր. զբաժակն զոր ետ ինձ
Հայր՝ ո՞չ ըմպիցեմ զնա։
12 Իսկ զունդն եւ հազարապետն եւ
սպասաւորք Հրէիցն կալան զՅիսուս
13 եւ կապեցին. Եւ ածին զնա նախ առ
Աննա որ էր աներ Կայիափայի, որ
քահանայապետն էր տարւոյն այնորիկ։
14 Այս այն Կայիափա էր որ խրատն ետ
Հրէից եթէ Լաւ է առն միում մեռա-
15 նել ի վերայ ժողովրդեանն։ Եւ երթա-
յին զհետ Յիսուսի Սիմոն Պետրոս
եւ միւս աշակերտն. եւ աշակերտն
այն, քանզի ծանօթ էր քահանայա-
պետին, եմուտ ընդ Յիսուսի ի գաւիթ
16 քահանայապետին։ Եւ Պետրոս կայր
առ դրանն արտաքոյ. Ել միւս աշա-
կերտն որ էր ծանօթ քահանայապե-
տին, եւ ասաց դռնապանն եւ եմոյծ
17 ի ներքս զՊետրոս։ Ասէ աղջիկն որ
դռնապանն էր՝ ցՊետրոս, Միթէ եւ
դո՞ւ յաշակերտաց առնն այնորիկ իցես։
18 Եւ նա ասէ, Ոչ եմ։ Կային անդ ծա-
ռայքն եւ սպասաւորք խարոյկ ար-
կեալ, քանզի ցուրտ էր, եւ ջեռնուին.
կայր ընդ նոսա եւ Պետրոս եւ ջեռնոյր։
19 Եւ քահանայապետն եհարց զՅիսուս
վասն աշակերտացն եւ վասն վարդա-
20 պետութեան նորա։ Պատասխանի ետ
նմա Յիսուս, Ես յայտնապէս խօսե-
ցայ աշխարհի. ես յամենայն ժամ ու-
սուցի ի ժողովրդեանն, եւ ի տաճարի
անդ ուր ամենայն Հրեայք ժողովեալ
էին, եւ ի ծածուկ ինչ ոչ խօսեցայ։
21 Զի՞ հարցանես զիս, հարց զայնոսիկ
որ լուանն, թէ զինչ խօսեցայ ընդ նո-
սա. ահաւասիկ նոքա գիտեն զինչ խօ-
22 սեցայ։ Իբրեւ նա զայն ասաց, մի ոմն
ի սպասաւորացն որ անդ կայր, ած
ապտակ Յիսուսի եւ ասէ, Այդպէս
պատասխանի տաս քահանայապետիդ։
23 Եւ Յիսուս ասէ ցնա, Եթէ չար ինչ
խօսեցայ, վկայեա վասն չարին, իսկ
24 եթէ բարի, ընդէ՞ր հարկանես զիս։ Եւ
առաքեաց զնա Աննա կապեալ առ Կա-
25 յիափա քահանայապետ։ Եւ Սիմոն
Պետրոս կայր անդ եւ ջեռնոյր. ասեն
ցնա, Միթէ եւ դո՞ւ յաշակերտաց ան-
տի նորա իցես։ Նա ուրացաւ եւ ասէ
26 թէ Չեմ։ Եւ ասէ մի ոմն ի ծառայից
քահանայապետին, ազգական այնորիկ
զորոյ զունկն եհատ Պետրոս, Ո՞չ ես
իսկ տեսի զքեզ ի պարտիզի անդ ընդ
27 նմա։ Դարձեալ ուրացաւ Պետրոս, եւ
վաղվաղակի հաւ խօսեցաւ։
28 Եւ ածին զՅիսուս ի վանացն Կայիա-
փայ յապարանս դատաւորին, եւ էր
այգուց. եւ նոքա ոչ մտին յապա-
րանսն, զի մի՛ պղծեսցին, այլ զի ու-
29 տիցեն զզատիկն։ Ել առ նոսա Պի-
ղատոս արտաքս եւ ասէ, Զի՞նչ չա-
րախօսութիւն մատուցանէք զառնէն
30 զայնմանէ։ Պատասխանի ետուն եւ
ասեն ցնա, Եթէ չէր չարագործ այրն
այն, ապա ոչ մատնէաք զնա քեզ։
31 Ասէ ցնոսա Պիղատոս, Առէք զնա դուք,
եւ ըստ ձերոց օրինացն դատեցարուք։
Ասեն ցնա Հրեայքն, Մեզ ոչ է արժան
32 սպանանել զոք։ Զի լցցի բանն Յի-
սուսի զոր ասաց, նշանակեալ թէ ո-
33 րով մահու մեռանելոց իցէ։ Եմուտ
միւսանգամ յապարանսն Պիղատոս,
կոչեաց զՅիսուս եւ ասէ ցնա, Դո՞ւ
34 ես թագաւորն Հրէից։ Պատասխանի
ետ Յիսուս, Ի քէ՞ն ասես զայդ եթէ
35 այլք ասացին քեզ զինէն։ Պատասխա-
նի ետ Պիղատոս, Միթէ՛ եւ ես Հրեա՞յ
իցեմ. ազգն քո եւ քահանայապետք
մատնեցին զքեզ ինձ. զի՞նչ գործ գոր-
36 ծեալ է քո։ Պատասխանի ետ Յիսուս,
Իմ արքայութիւն չէ յայսմ աշխարհէ.
եթէ յաշխարհէ աստի էր արքայու-
թիւնն իմ, սպասաւորքն իմ մարտն-
չէին արդեւք զի մի՛ մատնեցայց Հրէից,
բայց արդ թագաւորութիւնն իմ չէ
37 աստի։ Ասէ ցնա Պիղատոս, Ապա թէ
այդպէս իցէ, թագաւո՞ր ոմն ես դու։

Պատասխանի ետ Յիսուս , Դու ասես
թէ թագաւոր իցեմ․ բայց ես յայդ իսկ
ծնեալ եմ , եւ ի դոյն իսկ եկեալ եմ
յաշխարհ , զի վկայեցից ճշմարտու-
թեանն ․ ամենայն որ ի ճշմարտութենէ
38 է՝ լսէ բարբառոյ իմոյ ։ Ասէ ցնա Պի-
ղատոս , Զի՞նչ է ճշմարտութիւն ։ Զայս
իբրեւ ասաց , դարձեալ ել առ Հրեայսն
եւ ասէ ցնոսա , Ես եւ ոչ մի ինչ
39 պատճառս գտանեմ ի նմա ։ Բայց է ձեր
սովորութիւն , զի զմի ոք արձակեցից
ձեզ ի զատկիս ․ արդ կամի՞ք զի ար-
40 ձակեցից ձեզ զթագաւորն Հրէից ։ Ա-
ղաղակեցին ամենեքեան եւ ասէին ,
Մի՛ զդա , այլ զԲարաբբա ․ եւ էր Բա-
րաբբայն այն աւազակ ։

## ԳԼ․ ԺԹ

1 Յայնժամ ա՛ռ Պիղատոս զՅիսուս եւ
2 գան եհար ։ Եւ զինուորացն արարեալ
պսակ ի փշոց՝ եդին ի գլուխ նորա ,
եւ զգեցուցին նմա հանդերձ ծիրանի ․
3 [1]Եւ գային առ նա՛՛ եւ ասէին , Ողջ
եր , արքայ Հրէից ․ եւ հանէին նմա
4 ապտակս ։ Ել դարձեալ Պիղատոս ար-
տաքս եւ ասէ ցնոսա , Ահա ածեմ զնա
արտաքս առ ձեզ , զի գիտասջիք թէ
5 ես մեղս ինչ ի նմա ոչ գտանեմ ։ Ել
Յիսուս արտաքս , եւ ունէր պսակ ի
փշոց եւ հանդերձ ծիրանի ․ եւ ասէ
6 ցնոսա , Ահա այրդ [2]ցձեզ ։ Իբրեւ տե-
սին զնա քահանայապետքն եւ սպա-
սաւորք , ղաղակ՝ բարձին եւ ասեն ,
Ի խաչ հան , ի խաչ հան [1]զդա ․ ասէ
ցնոսա Պիղատոս , Առէք զդա ի ձեզ ,
եւ ձեզէն հանէք ի խաչ ․ զի ես ի դմա
7 մեղս ինչ ոչ գտանեմ ։ Պատասխանի
ետուն նմա Հրեայքն , Մեք օրէնս ու-
նիմք , եւ ըստ օրինաց մերոց պարտի
մեռանել , զի զանձն իւր Որդի Աստու-
8 ծոյ արար ։ Իբրեւ լուաւ զբանս զայս
9 Պիղատոս , առաւել եւս երկեաւ ։ Ե-
մուտ դարձեալ անդրէն յապարանսն ,
եւ ասէ ցՅիսուս , Ուստի՞ ես դու ․ եւ
10 Յիսուս ոչ ետ նմա պատասխանի ։ Ասէ
ցնա Պիղատոս , Ընդ իս ո՞չ խօսիս , ո՞չ
գիտես եթէ իշխանութիւն ունիմ հա-
նել զքեզ ի խաչ , եւ իշխանութիւն
11 ունիմ արձակել զքեզ ։ Պատասխանի
ետ Յիսուս , Ոչ ունէիր դու իշխանու-
թիւն ի վերայ իմ եւ ոչ մի , եթէ ոչ
էր տուեալ քեզ ի վերուստ ․ վասն այ-
նորիկ որ մատնեացն զիս քեզ , նորա
12 մեծ մեղք են ։ Եւ յայնմանէ Պիղատոս
խնդրէր արձակել զնա ․ եւ Հրեայքն
աղաղակէին եւ ասէին , Եթէ զդա ար-
ձակես , չես բարեկամ Կայսեր ․ ամե-
նայն ոք որ թագաւոր կոչէ զանձն
13 իւր , հակառակ է Կայսեր ։ Իսկ Պիղա-
տոս իբրեւ լուաւ զբանս զայսոսիկ ,
ած զՅիսուս արտաքս ․ եւ նստաւ ի
վերայ բեմին ի տեղւոջն որ կոչէր
Քարայատակ , եւ Եբրայեցերէն Կապ-
14 պաթա ։ (Էր ուրբաթն զատկի , եւ
էր ժամ իբրեւ վեցերորդ ,) եւ ասէ
ցՀրեայսն , Ահա թագաւորդ ձեր [2]ցձեզ ։
15 Եւ նոքա աղաղակէին , Բարձ [2]ի մէնջ ,
բարձ [2]ի մէնջ , եւ հան զդա ի խաչ ։
Ասէ ցնոսա Պիղատոս , Ես զթագա-
ւորդ ձեր ի խա՞չ հանիցեմ ։ Պատաս-
խանի ետուն քահանայապետքն , Չիք
16 մեր թագաւոր բաց ի Կայսերէ ։ Յայն-
ժամ ետ զնա ի ձեռս նոցա , զի ի խաչ
եհանիցեն ։

17 Եւ նոքա առեալ տանէին զնա ․ եւ
բարձեալ էր ինքնին զխաչափայտն , եւ
ելանէր ի տեղին որ անուանեալ էր
Գագաթան , եւ կոչէր Եբրայեցերէն
18 Գողգոթա ․ Ուր եւ ի խաչն իսկ հանին
զնա , եւ ընդ նմա երկուս եւս այլս
աստի եւ անտի , եւ ի մէջն զՅիսուս ։
19 Գրեաց եւ տախտակ մի Պիղատոս , եւ
եդ ի վերայ խաչին ․ եւ էր գրեալ , ՅԻ-
ՍՈՒՍ ՆԱԶՈՎՐԵՑԻ , ԹԱԳԱՒՈՐ ՀՐԷԻՑ ։
20 Զայն տախտակ ընթերցան բազումք
ի Հրէից , զի մօտ էր ի քաղաք անդր
տեղին ուր խաչեցաւն Յիսուս ․ եւ էր
գրեալ Եբրայեցերէն , Դաղմատերէն եւ
21 Յունարէն ։ Ասեն ցՊիղատոս քահա-
նայապետքն Հրէից , Մի՛ գրեր Թա-
գաւոր Հրէից , այլ թէ Նա ասաց , Թա-
22 գաւոր եմ Հրէից ։ Պատասխանի ետ
Պիղատոս , Զոր ինչ գրեցի՝ գրեցի ։
23 Իսկ զինուորքն իբրեւ հանին ի խաչ
զՅիսուս , առին զհանդերձս նորա եւ
արարին չորս մասունս , իւրաքանչիւր
զինուորի մասն ․ եւ զպատմուճանն,
քանզի էր առանց կարանի ի վերուստ
24 փորանկեալ ամենեւին , Ասեն ցմի-
մեանս , Մի՛ պատառեսցուք զայդ , այլ
արկցուք վիճակս ի վերայ դորա ում

[1] Յոմանս պակասէ
[2] Ի Յունին պակասէ

եւ ելցէ ․ զի լցցի գիրն որ ասէ, Բա-
ժանեցան զհանդերձս իմ յիւրեանս, եւ
ի վերայ պատմուճանի իմոյ վիճակ
արկին ։ Զինուորքն զայս ինչ գործե-
ցին ։
25 Եւ կային առ խաչին Յիսուսի մայրն
նորա, եւ քոյր մօր նորա, Մարիամ
Կղէովպայ, եւ Մարիամ Մագդաղե-
26 նացի ։ Յիսուս իբրեւ ետես զմայրն
եւ զաշակերտն զոր սիրէր, զի կայր
մօտ, ասէ ցմայրն, Կին դու, ահա
27 որդի քո ։ Ապա ասէ ցաշակերտն, Ահա
մայր քո ․ եւ յայնմ ժամանակէ ա՛ռ
աշակերտն զնա առ իւր ։
28 Յետ այսորիկ իբրեւ գիտաց Յիսուս
եթէ ահա ամենայն ինչ կատարեալ է,
(զի կատարեսցի գիրն,) ասէ, Ծարաւի
29 եմ ։ Եւ անդ կայր աման լի քա-
ցախով ․ եւ նոցա սպունգ լցեալ քացա-
խով [1]ընդ լեղւոյ՝ շուրջ եդեալ զմշտր-
կաւ զոպայի մատուցին ի բերան նորա ։
30 Իբրեւ ա՛ռ Յիսուս զքացախն [1]հան-
դերձ լեղւովն՝ ասէ, [2]Ամենայն ինչ՝
կատարեալ է ․ եւ խոնարհեցուցեալ
զգլուխն՝ աւանդեաց զոգին ։
31 Իսկ Հրեայքն ․ քանզի ուրբաթ էր,
զի մի՛ անդէն ի խաչին ագանիցին մար-
մինքն մինչեւ ցշաբաթն, (զի էր օր
մեծ շաբաթուն այնորիկ,) աղաչեցին
զՊիղատոս զի խորտակեսցեն զբարձս
32 նոցա եւ բարձցին ։ Եկին զինուորքն
եւ զառաջնոյն խորտակեցին զբարձս,
նոյնպէս եւ զմիւսոյն որ ընդ նմա ի
33 խաչն ելեալ էր ։ Բայց իբրեւ եկին առ
Յիսուս, եւ տեսին զի այն ինչ մեռ-
եալ էր, ոչ խորտակեցին զբարձս նո-
34 րա ․ Այլ մի ոմն ի զինուորացն տիգաւ
խոցեաց զկողս նորա, եւ վաղվաղակի
35 ել արիւն եւ ջուր ։ Եւ որ ետեսն՝
վկայեաց, եւ ճշմարիտ է վկայութիւն
նորա, եւ նա գիտէ թէ ճշմարիտ ասէ,
36 զի եւ դուք հաւատասջիք ։ Այս եղեւ
զի լցցի գիրն եթէ Ոսկր նորա մի՛
37 փշրեսցի ։ Եւ դարձեալ միւս գիր ասէ
եթէ Հայեսցին ի նա յոր խոցեցինն ։
38 Յետ այսորիկ աղաչեաց զՊիղատոս
Յովսէփ որ յԱրիմաթեայ էր, աշա-
կերտ Յիսուսի ի ծածուկ վասն ահին
Հրէից, զի բարձցէ զմարմինն Յիսու-
սի ․ եւ հրամայեաց Պիղատոս ․ [3]Եկին
39 եւ բարձին զնա՝ ։ Եկն եւ Նիկոդեմոս
որ եկեալն էր առ Յիսուս ի գիշերի
զառաջինն, եւ եբեր զմուռս խառն
ընդ հալուէս իբրեւ լտերս հարեւր ։
40 Առին զմարմինն Յիսուսի, եւ պատե-
ցին կտաւովք խնկովքն հանդերձ, որ-
41 պէս օրէն էր Հրէից պատել ։ Եւ էր
ի տեղւոջն յորում խաչեցաւ՝ պարտէզ ․
եւ ի պարտիզի անդ՝ գերեզման նոր
42 յորում ոչ ոք երբեք էր եդեալ ։ Անդ
վասն ուրբաթուն Հրէից, զի մօտ էր
գերեզմանն, եդին զՅիսուս ։

## ԳԼ․ Ի

1 Եւ ի միաշաբաթւոջն Մարիամ Մագ-
դաղենացի գայ առաւօտուն ընդ ար-
շալոյսն ի գերեզման անդր, եւ տեսա-
նէ զվէմն բարձեալ [4]ի դրաց գերեզմա-
2 նին՝ ։ Ապա ընթանայ եւ գայ առ Սի-
մովն Պետրոս եւ առ միւս աշակերտն
զոր սիրէր Յիսուս, եւ ասէ ցնոսա,
Բարձին զՏէր ի գերեզմանէ անտի, եւ
3 ոչ գիտեմք ուր եդին զնա ։ Ել Պետ-
րոս եւ միւս աշակերտն եւ գային ի
4 գերեզմանն ։ Ընթանային երկոքին ի
միասին, եւ միւս աշակերտն յառա-
ջեաց ընթացաւ վաղվաղակի քան զՊետ-
5 րոս եւ եկն նախ ի գերեզմանն ։ Եւ
խոնարհեալ տեսանէ զի կային անդ
կտաւքն, բայց ի ներքս ոչ եմուտ ։
6 Եկն եւ Սիմովն Պետրոս որ գայրն
զհետ նորա, եւ եմուտ ի գերեզմանն,
եւ տեսանէ զկտաւսն զի կային անդ ․
7 Եւ վարշամակն որ էր ի գլուխ նորա,
ոչ ընդ այլ կտաւսն կայր, այլ ուրոյն
8 ծալեալ ի մի կողմն ։ Յայնժամ եմուտ
եւ միւս աշակերտն, որ եկեալն էր
յառաջագոյն ի գերեզմանն, ետես եւ
9 հաւատաց ․ Զի չեւ եւս գիտէին զգիրս
թէ պարտ է նմա ի մեռելոց յառնել ։
10 Չոգան դարձեալ առ միմեանս աշա-
կերտքն ։
11 Բայց Մարիամ կայր արտաքոյ գե-
րեզմանին եւ լայր ․ եւ մինչդեռ լայր,
12 խոնարհեցաւ ի գերեզմանն ․ Եւ տեսա-
նէ երկուս հրեշտակս ի սպիտակս, զի
նստէին մի ի սնարից եւ մի յանոտից

[1]ի բազումս պակասէ
[2]ի Յունին պակասէ

[3]Բազումք, եկն և եբարձ զմարմին նորա, այլք՝ եկն և եբարձ զմարմինն Յիսուսի
[4]Ոմանք, ի գերեզմանէն

13 ուր կայր մարմինն Յիսուսի։ Եւ նոքա
ասեն ցնա, Կին դու, զի՞ լաս։ Ասէ
ցնոսա, Զի բարձին զՏէրն իմ [1]ի գե-
րեզմանէ անտի՝, եւ ոչ գիտեմ ուր
14 եդին զնա։ Զայս իբրեւ ասաց, դար-
ձաւ ի թիկունս կոյս, եւ տեսանէ զՅի-
սուս զի կայր․ եւ ոչ գիտէր թէ Յի-
15 սուս իցէ։ Ասէ ցնա Յիսուս, Կին դու,
զի՞ լաս, զո՞ խնդրես։ Նմա այսպէս
թուեցաւ թէ պարտիզպանն իցէ, ասէ
ցնա, Տէր, եթէ դու բարձեր զնա,
ասա ինձ ուր եդիր զնա, զի ես առից
16 զնա։ Ասէ ցնա Յիսուս, Մարիամ։ Եւ
նա դարձաւ եւ ասէ ցնա [2]Եբրայեցե-
րէն, Ռաբբունի, որ թարգմանի Վար-
17 դապետ։ Ասէ ցնա Յիսուս, Մի՛ մեր-
ձենար յիս, զի չեւ եւս ելեալ եմ առ
Հայր իմ․ այլ երթ դու առ եղբարսն
իմ, եւ ասա ցնոսա, Ելանեմ ես առ
Հայրն իմ եւ առ Հայր ձեր, եւ Աս-
18 տուածն իմ եւ Աստուած ձեր։ Գայ
Մարիամ Մագդաղենացի եւ պատմէ
աշակերտացն եթէ ետես նա զՏէր, եւ
զայս ինչ ասաց ցնա։
19 Եւ էր երեկոյ ի միաշաբաթւոջ ա-
ւուրն, եւ դրօք փակելովք ուր էին
աշակերտքն ժողովեալ վասն ահին
Հրէից, եկն Յիսուս եւ եկաց ի մէջի
նոցա, եւ ասէ ցնոսա, Ողջոյն ընդ
20 ձեզ։ Իբրեւ զայս ասաց, եցոյց նոցա
զձեռս եւ զկողսն իւր․ եւ խնդացին
21 աշակերտքն իբրեւ տեսին զՏէր։ Ասէ
ցնոսա դարձեալ, Ողջոյն ընդ ձեզ, որ-
պէս առաքեաց զիս Հայր [1]իմ, եւ ես
22 առաքեմ զձեզ։ Եւ զայս իբրեւ ասաց,
փչեաց ի նոսա եւ ասէ, Առէք Հոգի
23 Սուրբ․ Եթէ ումեք թողուցուք զմեղս,
թողեալ լիցի նոցա․ եթէ զուրուք ու-
նիցիք, կալեալ լիցի։
24 Իսկ Թովմաս, մի յերկոտասանիցն,
անուանեալն Երկուորեակ, ոչ էր ընդ
25 նոսա յորժամ եկն Յիսուս։ Ասէին ցնա
այլ աշակերտքն, եթէ Տեսաք զՏէր․
եւ նա ասէ ցնոսա, Եթէ ոչ տեսից ի
ձեռս նորա զնշան բեւեռացն, եւ ար-
կից զմատունս իմ ի տեղիս բեւեռացն,
եւ մխեցից զձեռս իմ ի կողս նորա,
ոչ հաւատամ։
26 Եւ յետ ութ աւուր դարձեալ էին
ի ներքս աշակերտքն, եւ Թովմաս ընդ
նոսա․ գայ Յիսուս դրօքն փակելովք
եւ եկաց ի մէջ, եւ ասէ, Ողջոյն ընդ
27 ձեզ։ Ապա ասէ ցԹովմաս, Բեր զմա-
տունս քո եւ արկ այսր եւ տես զձեռս
իմ, եւ բեր զձեռն քո եւ մխեա ի կողս
իմ, եւ մի՛ լինիր անհաւատ, այլ հա-
28 ւատացեալ։ Պատասխանի ետ Թովմաս
եւ ասէ ցնա, Տէր իմ եւ Աստուած իմ։
29 Ասէ ցնա Յիսուս, Այդ զի տեսեր
զիս եւ հաւատացեր․ երանի որոց ոչ
իցէ տեսեալ եւ հաւատասցեն։
30 Բազում եւ այլ նշանս արար Յիսուս
առաջի աշակերտաց իւրոց, որ ոչ է
31 գրեալ ի գիրս յայսմիկ։ Այլ այս այն-
չափ ինչ գրեցաւ, զի հաւատայցէք եթէ
Յիսուս՝ Քրիստոս է, Որդի Աստուծոյ․
եւ զի հաւատայցէք եւ զկեանսն յաւի-
տենականս ընդունիցիք յանուն նորա։

## ԳԼ․ ԻԱ

1 Յետ այսորիկ դարձեալ յայտնեաց
զանձն իւր Յիսուս աշակերտացն իւ-
րոց առ ծովեզերբն Տիբերեայ, եւ
2 յայտնեաց այսպէս․ Էին ի միասին Սի-
մովն Պետրոս, եւ Թովմաս անուանե-
եալն Երկուորեակ, եւ Նաթանայէլ որ
ի Կանայ Գալիլեացւոց, եւ որդիքն Զե-
բեդեայ, եւ այլք յաշակերտաց անտի
3 երկու։ Ասէ ցնոսա Սիմովն Պետրոս,
Երթամ ձուկն որսալ։ Ասեն ցնա,
Գամք եւ մեք ընդ քեզ։ Գնացին եւ
մտին ի նաւ, եւ յայնմ գիշերի կալան
4 եւ ոչինչ։ Իբրեւ այգ եղեւ, կայր Յի-
սուս յեզր ծովուն, բայց ոչ ծանեան
5 աշակերտքն թէ Յիսուս իցէ։ Ասէ
ցնոսա Յիսուս, Մանկունք, միթէ ու-
նի՞ք ինչ ուտելոյ։ Պատասխանի ետուն
6 եւ ասեն ցնա, Ոչ։ Ասէ ցնոսա, Ար-
կէք յաջակողմն նաւուն զուռկանդ եւ
գտանիցէք։ Արկին, եւ ոչ կարէին
ձգել ի բազմութենէ անտի ձկանցն։
7 Ասէ աշակերտն այն զոր սիրէրն Յի-
սուս՝ ցՊետրոս, Տէր է այն։ Սիմովն
Պետրոս իբրեւ լուաւ թէ Տէր է, ար-
կաւ զիւրեւ զսփածանելին, քանզի
8 մերկ էր, եւ ընկէց զինքն ի ծովն։ Եւ
այլ աշակերտքն նաւաւն իսկ գային,
քանզի չէին հեռի ի ցամաքէն, այլ
իբրեւ երկերիւր կանգնաւ, քարշէին
9 զգործին հանդերձ ձկամբքն։ Իբրեւ
ելին ի ցամաք, տեսանեն կրակեազ

---

[1] Ի յոմանէն պակասէ    [2] Յոմանս պակասէ

կայծականց եւ ձուկն մի ի վերայ եւ
10 հաց։ Ասէ ցնոսա Յիսուս, Բերէք ի
ձկանց այտի զոր դուքդ կալարուք
11 այժմիկ։ Եմուտ Սիմոն Պետրոս, եւ
ձգէր զգործին ի ցամաք լի մեծամեծ
ձկամբք հարիւր յիսուն եւ երիւք, եւ
այնչափ ինչ կայր եւ ոչ պատառեցաւ
12 գործին։ Ասէ ցնոսա Յիսուս, Եկայք
ճաշեցէք. եւ ոչ ոք յաշակերտացն իշ-
խէր հարցանել թէ Դու ո՞վ ես, զի գի-
13 տէին թէ Տէրն է։ Գայ Յիսուս եւ առ-
նու զհացն եւ տայ նոցա, նոյնպէս եւ
14 զձուկնն։ Զայս երիցս անգամ երեւե-
ցաւ Յիսուս աշակերտացն՝ յարուցեալ
ի մեռելոց։
15 Եւ իբրեւ ճաշեցին, ասէ ցՍիմոն
Պետրոս Յիսուս, Սիմոն Յովնանու,
սիրե՞ս զիս առաւել քան զդոսա։ Ասէ
ցնա, Այո, Տէր, եւ դու գիտես զի սի-
րեմ զքեզ։ Ասէ ցնա, Արածեա զգա-
16 ռինս իմ։ Դարձեալ ասէ ցնա, Սիմոն
Յովնանու, սիրե՞ս զիս։ Ասէ ցնա,
Այո, Տէր, եւ դու գիտես զի սիրեմ
զքեզ։ Ասէ ցնա, Արածեա զոչխարս
17 իմ։ Ասէ ցնա երիցս անգամ, Սիմոն
Յովնանու, սիրե՞ս զիս։ Տրտմեցաւ
Պետրոս, զի ասացն ցնա երիցս թէ
Սիրե՞ս զիս. եւ ասէ ցնա, Տէր, դու
զամենայն գիտես, եւ [1]դու իսկ զամե-
նայն ճանաչես եւ եթէ" սիրեմ զքեզ։
Ասէ ցնա Յիսուս, Արածեա զոչխարս
18 իմ։ Ամէն ամէն ասեմ քեզ, զի մինչ
մանուկն էիր, անձամբ անձին գօտի
ածէիր եւ երթայիր յո եւ կամէիր. եւ
յորժամ ծերասցիս, ձեռս ի վեր կալ-
ցես, եւ այլք ածցեն քեզ գօտի, եւ
19 տարցին ուր ոչն կամիցիս։ Զայս ա-
սաց նշանակել թէ, որով մահու փա-
ռաւոր առնիցէ զԱստուած. եւ զայս
իբրեւ ասաց, ասէ ցնա, Եկ զկնի իմ։
20 Դարձաւ Պետրոս եւ տեսանէ զաշա-
կերտն զոր սիրէր Յիսուս, զի երթայր
զկնի, (որ եւ անկաւ զլանջօքն նորա
եւ ասէ, Տէր, ո՞վ է որ մատնելոցն է
21 զքեզ։) Զնա տեսեալ Պետրոսի, ասէ
22 ցՅիսուս, Տէր, իսկ սա զի՞։ Ասէ ցնա
Յիսուս, Եթէ կամիմ, զի կացցէ դա
մինչեւ ես գամ. քեզ զի՞ փոյթ է, դու
23 եկ զկնի իմ։ Եւ ել բանս այս յեղբարս,
եւ համարեցան թէ աշակերտն այն ոչ
մեռանիցի. եւ ոչ ասաց նմա Յիսուս
եթէ Ոչ մեռանիցի, այլ [2]Թէ կամիմ
ես թէ կացցէ դա մինչեւ ես գամ[3]։
24 Այս աշակերտ է որ վկայէ վասն
այսոցիկ, որ եւ գրեացն իսկ զայսո-
սիկ. եւ գիտեմք եթէ ճշմարիտ է
25 վկայութիւն նորա։ Բայց է եւ այլ ինչ
բազում զոր արար Յիսուս, զոր եթէ
գրեալ էր մի ըստ միոջէ, կարծեմ թէ
եւ ոչ աշխարհս բաւական էր տանել
զգիրսն որ թէ գրեալ էին։

[1] Յոյնն, դու ճանաչես եթէ

[2] Յոյնն, Եթէ

[3] Բոլորովին յաւելուածն, քեզ զի՞ փոյթ է

# ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

## 'ՂՈՒԿԱՅ ԱՒԵՏԱՐԱՆՉԻ"

### ԳԼՈՒԽ Ա

1 ԶԲԱՆՆ առաջին [1]զոր արարի վասն
ամենայնի, ո՛ Թէոփիլէ, զոր սկսաւ
2 Յիսուս առնել եւ ուսուցանել, Մինչեւ
յօրն պատուիրելոյ առաքելոցն ի ձեռն
Հոգւոյն Սրբոյ՝ զորս ընտրեացն, եւ
3 վերացաւ. Որոց յանդիման կացոյց
զինքն կենդանի յետ չարչարանացն
իւրոց ի բազում արուեստս յաւուրս
քառասուն երեւել նոցա, եւ ասել վասն
4 արքայութեանն Աստուծոյ։ Եւ ի հա-
ցորդել ընդ նոսա հացի՝ պատուէր
տայր նոցա յԵրուսաղեմէ մի՛ մեկնել,
այլ սպասել աւետեացն Հօր զոր լուա-
5 րուքն յինէն։ Զի Յովհաննէս մկրտեաց
ի ջուր, այլ դուք մկրտիցիք ի Հոգին
Սուրբ, ոչ յետ բազում ինչ աւուրցս
6 այսոցիկ։ Եւ նոքա [2]մատուցեալ հար-
ցանէին զնա եւ ասէին, Տէր, եթէ
ի ժամանակի՞ աստ յայսմիկ հաստատա-
նելոց իցես զարքայութիւն Իսրայելի։
7 Ասէ ցնոսա, Ոչ է ձեր գիտել զժամս
եւ զժամանակս, զոր Հայր եդ յիւ-
8 րում իշխանութեան. Այլ առջիք զօ-
րութիւն ի հասանել Հոգւոյն Սրբոյ
ի վերայ ձեր. եւ եղիջիք ինձ վկայք
յԵրուսաղէմ եւ յամենայն Հրէաստա-
նի եւ ի Սամարիա եւ մինչեւ ի ծագս
9 երկրի։ Եւ զայս իբրեւ ասաց, մինչ-
դեռ հայէին նոքա, վերացաւ. եւ ամպն
10 կալաւ զնա յաչաց նոցա։ Եւ մինչդեռ
պշուցեալ հայէին ընդ երկինս երթա-
լոյ նորա, եւ ահաւասիկ արք երկու
երեւեցան նոցա ի հանդերձս սպիտակս,
11 Որք եւ ասացին, Արք Գալիլեացիք,
զի՞ կայք հայեցեալ ընդ երկինս. այս
Յիսուս որ վերացաւն ի ձէնջ յերկինս՝
սոյնպէս եկեսցէ զոր օրինակ տեսէք
12 զնա երթեալ յերկինս։ Ապա դարձան
յԵրուսաղէմ յանուանեալ լեռնէն Ձի-
թենեաց, որ է մերձ յԵրուսաղէմ ըստ
13 շաբաթու ճանապարհի։ Եւ իբրեւ
մտին, ելին ի վերնատունն ուր վանքն
իսկ էին, Պետրոս եւ Յակոբոս, Յով-
հաննէս եւ Անդրէաս, Փիլիպպոս եւ
Թովմաս, Բարթողոմէոս եւ Մատ-
թէոս, Յակոբոս Ալփեան եւ Շմաւոն
Նախանձայոյզ եւ Յուդա Յակոբեան։
14 Սոքա ամենեքեան էին հանապազոր-
դեալ միաբան յաղօթս հանդերձ կա-
նամբք եւ Մարեմաւ մարբն Յիսուսի
եւ եղբարբք նորա։
15 Ա. Եւ յաւուրսն յայնոսիկ յարու-
ցեալ Պետրոս ի մէջ [3]եղբարցն՝ ասէ,
(եւ էր անդ բազմութիւն անուանց
16 իբրեւ հարիւր եւ քսանից,) Արք եղ-
բարք, պարտ էր կատարել գրոյն, զոր
յառաջագոյն ասաց Հոգին Սուրբ ի բե-
րանոյ Դաւթի վասն Յուդայի, որ ե-
ղեւ առաջնորդ ունելեացն Յիսուսի.
17 Զի ի թիւս մեր էր ընդ մեզ, եւ հաս-
եալ էր նմա վիճակ պաշտամանս այ-
18 սորիկ։ Սա ստացաւ դեղ ի վարձուց
անիրաւութեան, եւ [4]ուռուցեալ հեր-
ձաւ ընդ մէջ եւ հեղաւ ամենայն փոր
19 նորա։ Եւ յայտնի եղեւ ամենեցուն
որ բնակեալ են յԵրուսաղէմ մինչեւ
կոչել զեղջն այնմիկ բարբառովն իւ-
րեանց Ակեղդամա, այսինքն է՝ Գեղ
20 արեան։ Զի գրեալ է ի գիրս Սաղմո-
սաց, Եղիցի բնակութիւն նորա աւե-
րակ, եւ մի՛ ոք իցէ որ բնակիցէ ի
նմա. եւ, Զկարգ նորա առցէ այլ։
21 Արդ պարտ է յարանցս յայսցանէ եկե-
լոցս ընդ մեզ յամենայն ժամանակի
յորում մուտ եւ ել առ մեզ Տէր Յի-
22 սուս, Սկսեալ ի մկրտութենէն Յով-
հաննու մինչեւ յօրն յորում վերացաւ

[1] Ի Յունէն պակասէ [2] Ոմանք, ժողովեալ

[3] Ոմանք, աշակերտացն
[4] Յոյնն, անկեալ գլխիվայր

ի մէնջ, վկայ յարութեան նորա ընդ
23 մեզ լինել միում ի սոցանէ։ Եւ կա-
ցուցին երկուս, զՅովսէփ որդւոյ Բար-
սաբայն կոչէին, որ անուանեցաւն
24 Յուստոս, եւ զՄատաթիա։ Եւ կաց-
եալ յաղօթս ասեն, Դու, Տէր, սրտա-
գէտ ամենայնի, յայտնեա զմի ով զոր
25 ընտրեցեր ի սոցանէ յերկոցունց, Առ-
նուլ զվիճակ սպաշտամանս այսորիկ եւ
զառաքելութեան, յորմէ անկաւ Յու-
26 դաս գնալ ի տեղի իւր։ Եւ ետուն վի-
ճակս նոցա, եւ ելանէր վիճակն Մա-
տաթեայ, եւ համարեցաւ ընդ մետա-
սան առաքեալսն։ ՎՁ

ԳԼ. Բ

1 Եւ ի կատարել [1]աւուրցն Պենտակոս-
տէից" էին ամենեքեան միաբան ի մի-
2 ասին։ Եւ եղեւ յանկարծակի հնչիւն
յերկնից՝ եկեալ իբրեւ սաստիկ հողմոյ,
եւ ելից զամենայն տունն յորում նստ-
3 էին։ Եւ երեւեցան նոցա բաժանեալ
լեզուք իբրեւ ի հրոյ, եւ նստաւ իւ-
4 րաքանչիւր ի վերայ նոցա։ Եւ լցան
ամենեքեան Հոգւով Սրբով, եւ սկսան
խօսել յայլ լեզուս որպէս եւ Հոգին
5 տայր բարբառել նոցա։ Եւ էին յԵրու-
սաղէմ բնակեալ Հրեայք, արք երկիւ-
ղածք, յամենայն ազգաց որ ի ներքոյ
6 երկնից։ Եւ իբրեւ եղեւ բարբառս այս,
եկն միաբան բազմութիւնն եւ խռնե-
ցաւ, զի լսէին յիւրաքանչիւր լեզուս
7 խօսել նոցա։ Սքանչանային ամենե-
քեան եւ զարմանային եւ ասէին ընդ
միմեանս, Ո՞չ ահաւասիկ ամենեքեան
սոքա որք խօսինս՝ Գալիլեացիք են.
8 Եւ զիա՞րդ լսեմք մեք յիւրաքանչիւր
9 բարբառս մեր յորում ծնեալ եմք. Պար-
թեւք եւ Մարք եւ Իղամացիք եւ որ
բնակեալ են ի Միջագետս, ի Հրէաս-
տանի եւ ի Գամիրս, ի Պոնտոս եւ
10 յԱսիա, ի Փռիւգիա եւ ի Պամփիւլիա,
յԵգիպտոս եւ ի կողմանս Լիբէացւոց
որ ընդ Կիւրենացիս եւ որ եկք Հռով-
11 մայեցիք, Հրեայք եւ եկք նոցուն,
Կրետացիք եւ Արաբացիք, լսեմք խօ-
սից նոցա ի մեր լեզուս զմեծամեծս
12 Աստուծոյ։ Սքանչանային ամենեքեան
զարմացեալք, եւ ասէին ցմիմեանս,

13 Զի՞նչ կամիցի այս լինել։ Եւ կիսոցն
ընդ խաղ արկեալ ասէին թէ Քաղ-
ցուալից իցեն։
14 Յարուցեալ Պետրոս հանդերձ մե-
տասանիւքն՝ ամբարձ զձայն իւր եւ
խօսեցաւ ընդ նոսա, Արք Հրէաստա-
նեայք եւ որ բնակեալ էք յԵրուսաղէմ,
ամենեքին, այս ձեզ յայտնի լիցի, եւ
15 ունկն դիք բանից իմոց. Ոչ որպէս
դուքդ կարծէք թէ սոքա արբեալ իցեն,
16 զի դեռ երեք ժամք են աւուրս։ Այլ
այս է որ ասացաւ ի ձեռն մարգարէին
17 Յովելայ. Եւ եղիցի յետ այսորիկ յա-
ւուրս յետինս, ասէ Աստուած, հեղից
յՈգւոյ իմմէ ի վերայ ամենայն մարմ-
նոյ, եւ մարգարէասցին ուստերք ձեր
եւ դստերք ձեր, եւ երիտասարդք ձեր
տեսիլս տեսցեն, եւ ծերք ձեր երա-
18 զովք յերազեսցին։ Եւ ի վերայ ծառա-
յից իմոց եւ ի վերայ աղախնանց իմոց
յաւուրսն յայնոսիկ հեղից յՈգւոյ իմմէ,
19 եւ մարգարէասցին։ Եւ տաց նշանս
յերկինս ի վեր, եւ նշանս յերկիր ի
խոնարհ՝ արիւն եւ հուր եւ մրրիկ
20 ծխոյ։ Արեգակն դարձցի ի խաւար,
եւ լուսին՝ յարիւն, մինչչեւ եկեալ
21 իցէ օր Տեառն մեծ եւ երեւելի։ Եւ
եղիցի ամենայն որ կարդասցէ զանուն
Տեառն՝ կեցցէ։
22 Բ. Արք Իսրայելացիք, լուարուք
զբանս զայսոսիկ. զՅիսուս Նազովրե-
ցի, զայր ցուցեալ յԱստուծոյ ի ձեզ
զօրութեամբ եւ նշանօք եւ արուես-
տիւք, զոր արար նովաւ Աստուած
ի միջի ձերում, որպէս եւ դուք իսկ
23 գիտէք, Զնա, նկատեալ խորհրդով
եւ կանխագիտութեամբն Աստուծոյ
[2]մատնեալ, ի ձեռս" անօրինաց բեւեռ-
24 եալ ի փայտի սպանէք. Զոր Աստուած
յարոյց՝ լուծեալ զերկունս մահու,
քանզի ոչ էր հնար ըմբռնել նմա ի
25 նմանէ։ Դաւիթ իսկ ասէ զնմանէ, Յա-
ռաջագոյն տեսանէի զՏէր առաջի իմ
յամենայն ժամ, զի է ընդ աջմէ իմմէ,
26 զի մի՛ սասանեցայց. Վասն այսորիկ
ուրախ եղեւ սիրտ իմ, եւ ցնծացաւ
լեզու իմ, եւս եւ մարմին իմ բնա-
27 կեսցէ յուսով։ Զի ոչ թողցես զանձն
իմ ի դժոխս, եւ ոչ տացես Սրբոյ
քում տեսանել զապականութիւն։

---

[1] Բազում, աւուրն Պենտեկոստէի

[2] Ոմանք, մատնեալ առէք և ի ձեռն

28 Ծանուցեր ինձ զճանապարհս կենաց.
լցուցեր զիս ուրախութեամբ երեսաց
29 քոց [1]ի քաղցրութենէ ։ Արք եղբարք,
պարտ է համարձակութեամբ ասել
վասն նահապետին Դաւթի, զի ե՛ւ մե-
ռաւ ե՛ւ թաղեցաւ, եւ գերեզման նո-
րա կայ ի միջի մերում մինչեւ ցայսօր ։
30 Զի մարգարէ էր, եւ գիտէր եթէ երդ-
մամբ երդուաւ նմա Աստուած ի պտղոյ
որովայնի [2]նորա նստուցանել՝ յաթոռ
31 նորա, Ցառաջագոյն ծանուցեալ խօ-
սեցաւ վասն յարութեանն Քրիստոսի,
զի ոչ թողաւ ոգի նորա ի դժոխս, եւ
ոչ մարմին նորա ետես ապականու-
32 թիւն ։ Զայս Յիսուս յարոյց Աստուած,
33 որում ամենեքին մեք վկայ եմք ։ Ա-
ջովն Աստուծոյ բարձրացեալ, զաւե-
տիս Հոգւոյն Սրբոյ ընկալեալ ի Հօրէ՝
սփռեաց զայս, զոր դուք իսկ տեսա-
34 նէք եւ լսէք ։ Զի ոչ եթէ Դաւիթ ել
յերկինս, ասէ իսկ ինքն, Ասաց Տէր
35 ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ՝ Մին-
չեւ եդից զթշնամիս քո պատուանդան
36 ոտից քոց ։ Արդ ճշմարտիւ գիտասցէ
ամենայն տունն Իսրայելի, զի ե՛ւ Տէր
զնա ե՛ւ Օծեալ՝ Աստուած արար, զայն
Յիսուս զոր դուքն խաչեցէք ։
37 Եւ լուեալ զայս՝ զղջացան ի սիրտս
իւրեանց, եւ ասեն ցՊետրոս եւ ցայլ
առաքեալսն, Զի՞նչ գործեսցուք, արք
38 եղբարք ։ Ասէ ցնոսա Պետրոս, Ապա-
շաւեցէք եւ մկրտեսցի իւրաքանչիւր
ոք ի ձէնջ յանուն [3]Տեառն Յիսուսի
Քրիստոսի ի թողութիւն մեղաց, եւ
ընկալջիք զաւետիս Հոգւոյն Սրբոյ ։
39 Զի ձեզ են աւետիքս եւ որդւոց ձերոց,
եւ ամենայն հեռաւորաց զորս կոչես-
40 ցէ Տէր Աստուած մեր ։ Եւ այլովք
բանիւք բազմօք վկայութիւն դնէր,
եւ մխիթարէր զնոսա եւ ասէր, Ապրե-
ցարուք յազգէ աստի խոտորելոյ յայս-
41 մանէ ։ Ոմանք յօժարութեամբ ընկա-
լեալ զբան նորա մկրտեցան, եւ յա-
ւելան յաւուր յայնմիկ ոգիք իբրեւ
երեք հազարք ։
42 Գ. Եւ էին հանապազորդեալք վար-
դապետութեան առաքելոցն եւ հաղոր-
դութեան եւ բեկանելոյ հացին եւ ա-
43 ղօթից ։ Եւ լինէր ամենայն անձին ահ
եւ երկեւղ, եւ բազում նշանք եւ ար-
ուեստք ի ձեռս առաքելոցն գործէին ։
44 Ամենայն հաւատացեալքն էին ի միա-
սին, եւ ունէին զամենայն ինչ հա-
45 սարակաց ։ Եւ զստացուածս եւ զինչս
վաճառէին, եւ բաշխէին զայն ամենե-
46 ցուն ըստ զիարդ ումեք ինչ պիտոյ լինէր ։ Հա-
նապազօր կանխեալ միաբանութեամբ
ի տաճարն, եւ ատենին բեկանէին
զհացն, եւ առնուին կերակուր ուրա-
խութեամբ եւ միամտութեամբ սրտի.
47 Օրհնէին զԱստուած եւ ունէին շը-
նորհս առ ամենայն ժողովուրդն. եւ
Տէր յաւելոյր [4]ի փրկեալսն հանապա-
զօր ի նոյն՝ ։

ԳԼ. Գ

1 Պետրոս եւ Յովհաննէս ելանէին ի
տաճար անդր յիններորդ ժամու աղօ-
2 թիցն ։ Եւ էր այր մի կաղ յորովայնէ
մօր իւրոյ զոր բարձեալ դնէին հանա-
պազ առ դրան տաճարին, որ կոչէր
Գեղեցիկ, խնդրել ողորմութիւն յայն-
3 ցանէ որ մտանէին ի տաճարն ։ Որոյ
տեսեալ զՊետրոս եւ զՅովհաննէս զի
մտանէին ի տաճարն, աղաչէր ողոր-
4 մութիւն առնուլ ։ Հայեցաւ ի նա Պետ-
րոս Յովհաննու հանդերձ եւ ասէ,
5 Հայեաց ի մեզ ։ Նա դարձաւ ի նոսա
եւ ակն ունէր առնուլ ինչ ի նոցանէ ։
6 Եւ ասէ Պետրոս, Արծաթ եւ ոսկի ոչ
ունիմ, բայց զոր ունիմս՝ զայս տաց
քեզ. յանուն Յիսուսի Քրիստոսի Նա-
7 զովրեցւոյ արի եւ գնա ։ Եւ կալեալ
զաջոյ ձեռանէ նորա՝ յարոյց զնա. եւ
անդէն հաստատեցան [5]բարձք նորա
8 եւ սրունք՝ ։ Ի վեր վազեաց եւ սկսաւ
գնալ, եւ եմուտ ընդ նոսա ի տաճարն,
գնայր եւ վազվազէր եւ օրհնէր զԱս-
9 տուած ։ Եւ ետես ամենայն ժողո-
վուրդն զնա, զի գնայր եւ օրհնէր զԱս-
10 տուած. Եւ գիտէին զնա զի սա էր որ
նստէր վասն ողորմութեան առ Գեղե-
ցիկ դրան տաճարին, եւ լցան զար-
մանալեօք ի վերայ նշանին որ եղեւ ։
11 Եւ մինչ նա ունէր զՊետրոս եւ
զՅովհաննէս, ընթացաւ ամենայն ժո-

[1]Ի Յոյնն պակասի
[2]Ոմանք, նորա ըստ մարմնոյ յարուցանել զՔրիստոս նստել
[3]Յոմանս պակասի
[4]Ոմանք, զփրկեալսն հանապազօր յեկեղեցին
[5]Յոյնն, թաթք ոտից նորա և կոճք

ղովուրդն առ նոսա ի սրահն որ կոչէր
12 Սողոմոնին՝ զարմացեալք։ Իբրեւ ե-
տես Պետրոս, պատասխանի ետ ժո-
ղովրդեանն, Արք Իսրայելացիք, զի՞
զարմացեալ էք ի վերայ այսորիկ, կամ
ընդ մեզ զի՞ էք պշուցեալ, իբրու թէ
անձին զօրութեամբ ինչ կամ [1]քաջու-
թեամբ արարեալ իցէ զգնալդ դմա։
13 Աստուած Աբրահամու եւ Աստուած
Իսահակայ եւ Աստուած Յակովբայ,
Աստուած հարցն մերոց, փառաւորեաց
զՈրդի իւր զՅիսուս, զոր դուքն մատ-
նեցէք եւ ուրացարուք առաջի Պիղա-
14 տոսի ի դատել նորա արձակել։ Եւ
դուք զՍուրբն եւ զԱրդարն ուրացա-
րուք եւ խնդրեցէք այր մի մահապարտ
15 շնորհել ձեզ։ Եւ զԱռաջնորդ կենացն
սպանէք, զոր Աստուած յարոյց ի մե-
16 ռելոց, որում մեք իսկ վկայ եմք։ Եւ
հաւատովք անուան նորա զսա զոր
տեսանէք եւ գիտէք՝ հաստատեաց ա-
նուն նորա. եւ հաւատքն որ նովաւ՝
ետուն դմա զառողջութիւնս զայս յան-
17 դիման ձեր ամենեցուն։ Եւ արդ, եղ-
բարք, գիտեմ զի անգիտութեամբ ա-
18 րարէք, որպէս եւ իշխանքն ձեր։ Այլ
Աստուած որպէս յառաջագոյն պատ-
մեաց ի բերանոյ ամենայն մարգարէից
զչարչարելն Քրիստոսի իւրոյ, նոյնպէս
19 եւ կատարեաց։ Արդ ապաշխարեցէք եւ
20 դարձարուք ի ջնջել զմեղս ձեր. Որպէս
զի եկեսցեն ժամանակք հանգստեան
յերեսաց Տեառն, եւ առաքեսցէ զյա-
ռաջագոյն նկատեալն ձեզ, զՅիսուս
21 Քրիստոս։ Զոր պարտ է երկնից ըն-
դունել մինչեւ ի ժամանակս ամենե-
ցուն հաստատելոյ. զորոց խօսեցաւ
Աստուած ի բերանոյ սրբոց իւրոց
մարգարէից[2]։
22 Դ. Մովսէս ասաց [3]ցհարսն մեր", թէ
Մարգարէ յարուսցէ ձեզ Տէր Աս-
տուած ձեր յեղբարց ձերոց իբրեւ զիս,
նմա լուիջիք ըստ ամենայնի, որ ինչ
23 եւ խօսեսցի առ ձեզ։ Եւ եղիցի ամե-
նայն անձն որ ոչ լուիցէ մարգարէին
այնմիկ՝ սատակեսցի ի ժողովրդենէն։
24 Եւ ամենայն մարգարէք որ ի Սամուե-
լէ եւ այսր՝ խօսեցան եւ պատմեցին
25 զաւուրսս զայսոսիկ։ Դուք էք որդիք
մարգարէիցն եւ ուխտին զոր ուխ-
տեաց Աստուած ընդ հարսն մեր, ե-
ասէ ցԱբրահամ, Ի զաւակի քում օրհ-
26 նեսցին ամենայն ազգք երկրի։ Ձեզ
նախ յարոյց Աստուած զՈրդի իւր եւ
առաքեաց զնա օրհնել զձեզ՝ ի դառնալ
ձեզ իւրաքանչիւր ի չարեաց ձերոց։

ԳԼ. Դ

1 Եւ մինչդեռ խօսէին նոքա ընդ ժողո-
վրդեանն, հասին ի վերայ նոցա [4]քա-
հանայքն եւ իշխանք տաճարին եւ
2 սադուկեցիքն, Զայրագնեալք վասն
ուսուցանելոյ նոցա զժողովուրդն եւ
պատմելոյ Յիսուսիւ զյարութիւն մե-
3 ռելոց։ Մխեցին ի նոսա զձեռս իւ-
եանց, եւ եդին զնոսա ի բանտի մին-
4 չեւ ի վաղիւն, զի էր ընդ երեկս։ Իսկ
բազումք ի լսողաց բանին հաւատացին,
եւ եղեւ թիւ մարդկանն իբրեւ հա-
զարաց հնգից։
5 Եւ եղեւ ի վաղիւ անդր ժողովել
նոցա զիշխանսն եւ զերիցունս եւ
6 զդպիրսն յԵրուսաղէմ, Եւ զԱննա քա-
հանայապետ եւ զԿայիափա եւ զՅով-
հաննէս եւ զԱղեքսանդրոս, եւ որք
միանգամ էին յազգէ [5]քահանայու-
7 թեանն։ Եւ կացուցեալ զնոսա ի մէջ
հարցանէին, Որո՞վ զօրութեամբ կամ
որո՞վ անուամբ արարէք դուք զայս։
8 Յայնժամ Պետրոս լցեալ Հոգւով Սրբով՝
ասէ ցնոսա, Իշխանք ժողովրդեան եւ
9 երիցունք Իսրայելի, [6]Եթէ արժա՞ն
ինչ իցէ դատել զմեզ" այսօր վասն ե-
րախտեաց առն միոյ ակարի որով սա
10 բժշկեցաւ, Յայտնի լիցի ամենեցուն
ձեզ եւ ամենայն ժողովրդեանն Իսրա-
յելի, զի յանուն Յիսուսի Քրիստոսի
Նազովրեցւոյ զոր դուքն խաչեցէք,
զոր Աստուած յարոյց ի մեռելոց, նո-
վաւ սա կայ առողջ առաջի ձեր ող-
11 ջացեալ։ Նա է վէմն անարգեալ ի ձէնջ
շինողաց, որ եղեւ գլուխ անկեան.
12 Եւ չիք այլով իւիք փրկութիւն, զի
եւ ոչ անուն այլ գոյ ի ներքոյ երկնից
տուեալ ի մարդիկ, որով արժան իցէ
կեալ մեզ։
13 Ե. Հայեցեալ ի համարձակութիւնն

[1] Յոյնն, բարեպաշտութեամբ
[2] Յոյնն յաւելու, ի յաւիտենից
[3] Յոմանս պակասի
[4] Ոմանք, քահանայապետքն
[5] Ոմանք, քահանայապետութեանն
[6] Յոյնն, Եթէ քննիցիմք

Պետրոսի եւ Յովհաննու, եւ ի վերայ
հասեալ թէ արք տղէտք եւ առանց
դպրութեան են, զարմանային, զի ճա-
նաչէին զնոսա թէ ընդ Յիսուսի էին.
14 Եւ զայրն եւս տեսանէին զբժշկեալն
զի կայր ընդ նոսա, եւ ոչինչ կարէին
15 տալ պատասխանի ։ Եւ հրամայեալ
նոցա արտաքս քան զատեանն երթալ,
16 խորհէին ընդ միմեանս, Եւ ասեն,
Զի՞նչ արասցուք արանցս այսոցիկ,
զի երեւելի նշան եղեւ ի ձեռն սոցա.
ամենայն իսկ բնակչաց Երուսաղեմի
17 յայտ է եւ ոչ կարեմք ուրանալ ։ Այլ
զի մի՛ առաւել ճարակեսցի ի ժողո-
վուրդն, սպառնասցուք նոցա մի՛ եւս
խօսել յանուանն յայն մի՛ ումեք ի մարդ-
18 կանէ ։ Եւ կոչեցեալ զնոսա պատուի-
րեցին ամենեւին մի՛ խօսել եւ մի՛ ու-
19 սուցանել յանուն Յիսուսի ։ Իսկ Պետ-
րոս եւ Յովհաննէս պատասխանի ե-
տուն եւ ասեն ցնոսա. Եթէ արժան
իցէ առաջի Աստուծոյ ձեզ լսել առա-
20 ւել քան Աստուծոյ, ընտրեցէք ։ Այլ
մեք ոչ կարեմք զոր տեսաքն եւ լուաք՝
21 չխօսել ։ Նոքա սպառնացեալ արձակե-
ցին զնոսա, եւ ոչինչ գտեալ թէ որ-
պէս պատուհասեսցեն զնոսա վասն
ժողովրդեանն, զի ամենեքեան փա-
ռաւոր առնէին զԱստուած վասն ի-
22 րացն եղելոց ։ Զի ամաց էր այրն աւելի
քան զքառասուն, յորոյ վերայ եղեւ
նշանս այս բժշկութեան ։
23 Եւ անտի արձակեալ եկին առ իւր-
եանսն, եւ պատմեցին որչափ ինչ
ասացին ցնոսա քահանայապետքն եւ
24 երիցունքն ։ Եւ նոցա լուեալ [1]ամբար-
ձին զձայնս իւրեանց առ Աստուած
եւ ասեն, Դու, Տէր [2]Աստուած, որ
արարեր զերկինս եւ զերկիր եւ զծով
25 եւ զամենայն որ ի նոսա, Որ ի բերա-
նոյ [2]հօր մերոյ՝՝ Դաւթի ծառայի քո՝
[2]ի ձեռն Հոգւոյն Սրբոյ՝՝ ասացեր, Զմէ՞
խռովեցան հեթանոսք, եւ ժողովուրդք
26 խորհեցան ի սնոտիս. Յանդիման եղեն
թագաւորք երկրի եւ իշխանք ժողո-
վեցան ի միասին վասն Տեառն եւ վասն
27 Օծելոյ նորա ։ Ժողովեցան արդարեւ
ի քաղաքիս յայսմիկ ի վերայ սրբոյ
`Որդւոյ քո Յիսուսի զոր օծերն՝ Հե-
`րովդէս եւ Պոնտիոս Պիղատոս ազգօք
28 եւ ժողովրդովք Իսրայէլի, Առնել որ-
չափ ձեռն քո եւ կամք յառաջագոյն
29 սահմանեցին լինել ։ Եւ արդ, Տէր,
հայեաց ի սպառնալիս նոցա, եւ տուր
ծառայից քոց ամենայն համարձակու-
30 թեամբ խօսել զբանն քո. Ի ձգել զձեռն
քո ի բժշկութիւն, եւ նշանս եւ ար-
ուեստս լինել անուամբն սրբոյ Որդւոյ
31 քո Յիսուսի ։ Եւ մինչ կային նոքա
յաղօթս, շարժեցաւ տեղին յորում էին
ժողովեալ, եւ լցան ամենեքին Հոգւով
Սրբով, եւ խօսէին զբանն Աստուծոյ
համարձակութեամբ ։
32 Զ. Եւ բազմութեան հաւատացելոցն
էր սիրտ եւ անձն մի. եւ ոչ ոք ի նո-
ցանէ ասէր զընչից իւրոց թէ իւր իցէ,
այլ էր նոցա ամենայն ինչ հասարա-
33 կաց ։ Եւ զօրութեամբ բազմաւ տա-
յին վկայութիւն առաքեալքն զյարու-
թեանն Տեառն Յիսուսի [2]Քրիստոսի.
եւ շնորհք մեծամեծք էին ի վերայ ա-
34 մենեցուն նոցա ։ Եւ ոչ ոք կարօտէր
ի նոսա, զի որ միանգամ տեարք էին
գեղից կամ ապարանից՝ վաճառէին եւ
35 բերէին զգինս վաճառելոցն, Դնէին
առ ոտս առաքելոցն. եւ բաշխէին իւ-
րաքանչիւր որպէս ումեք պիտոյ ինչ
36 լինէր ։ [3]Յովսէփ որ կոչեցաւն Բառ-
նաբաս յառաքելոց անտի, (որ թարգ-
մանի որդի մխիթարութեան,) Ղեւ-
37 տացի, յազգէ Կիպրացի, Էր նորա գեղ,
վաճառեաց եւ եբեր զգինսն, եդ առ
ոտս առաքելոցն ։

## ԳԼ. Ե

1 Իսկ այր ոմն Անանիա անուն հան-
դերձ կնաւ իւրով Սափիրաւ վաճառ-
2 եաց ագարակ. Եւ խորեաց ի գնոց
անտի՝ գիտելով եւ կնոջն, եւ եբեր
մասն ինչ եդ առ ոտս առաքելոցն ։
3 Ասէ Պետրոս, Անանիա, ընդէ՞ր ելից
Սատանայ զսիրտ քո ստել քեզ Հոգ-
ւոյն Սրբոյ, եւ խորել ի գնոց գեղջն.
4 Ո՞չ ապաքէն մինչ կայրն՝ քո էր, եւ
ի վաճառելն՝ ընդ քո իշխանութեամբ
էր. զի՞ է զի եդիր ի սրտի քում զիրս
զայս. ոչ ստեցեր մարդկան, այլ Աս-
5 տուծոյ ։ Եւ լուեալ Անանիա զբանս

[1]Յոյնն, ամբարձին միաբան
[2]Յոմանս պակասէ

[3]Ոմանք, Յովսէս

զայսօսիկ՝ անկաւ եւ եհան զոգի․ եւ
եղեւ ահ մեծ ի վերայ ամենեցուն որ
6 լուանն զայն։ Յոտն կացին երիտա-
սարդքն եւ ամփոփեցին զնա, եւ տա-
7 րան թաղեցին։ Եւ եղեւ իբրեւ ժամք
երեք անցին, եւ կին նորա ոչ գիտէր
8 զինչ եղեալն էր, եմուտ ի ներքս։ Պա-
տասխանի ետ նմա Պետրոս եւ ասէ,
Ասա դու ինձ թէ ա՞յնչափի զնոց զգեղն
վաճառեցէք։ Եւ նա ասէ, Այո, այն-
9 չափ։ Եւ ասէ ցնա Պետրոս, Զի՞ է զի
միաբանեցէք դուք փորձել զՀոգին
Տեառն․ ահա ոտքն որ թաղեցին զայրն
10 քո ի դրանն՝ հանցեն եւ զքեզ։ Եւ
անկաւ անդէն առ ոտս նորա եւ եհան
զոգի, մտին երիտասարդքն, գտին զնա
մեռեալ եւ հանին թաղեցին առ առն
11 իւրում։ Եւ եղեւ երկեւղ մեծ ի վերայ
ամենայն եկեղեցւոյն, եւ ի վերայ ա-
մենեցուն որ լուանն զայն։
12 Է․ Եւ ի ձեռս առաքելոցն լինէին
նշանք եւ արուեստք բազումք ի ժո-
ղովրդեանն․ եւ էին միաբան ամենե-
13 քեան ի սրահին Սողոմոնի։ Եւ յայլոց
անտի ոչ ոք իշխէր մերձենալ առ նոսա,
14 այլ յարգէր զնոսա ժողովուրդն։ Եւ
առաւել եւս յաւելուին հաւատացեալքն
ի Տէր, բազմութիւն արանց եւ կա-
15 նանց․ Մինչեւ ի հրապարակսն հանել
զհիւանդս, եւ դնել պատգարակօք եւ
մահճօք իւրեանց, զի ընդ անցանելն
Պետրոսի՝ գոնէ հովանի նորա հասցէ
16 ումեք ի նոցանէ։ Եւ ժողովէր բազ-
մութիւնն շուրջ ի քաղաքաց անտի
յԵրուսաղէմ, բերէին զհիւանդս եւ
զնեղեալս յայսոց պղծոց, որք եւ բժշ-
կէին ամենեքեան։
17 Յարուցեալ քահանայապետն եւ ա-
մենեքին որ ընդ նմա, աղանդ սադու-
18 կեցւոց, լցան նախանձու։ Եւ արկին
զձեռս յառաքեալսն եւ եդին զնոսա
19 [1]հրապարակաւ ի բանտի"։ Այլ հրեշ-
տակ Տեառն գիշերի եբաց զդուրս բան-
20 տին, եւ հանեալ զնոսա՝ ասէ, Գնացէք
կացէք ի տաճարին, եւ խօսեցարուք
ընդ ժողովրդեանն զամենայն պատ-
21 գամս կենացս այսոցիկ։ Եւ իբրեւ
լուան, մտին ընդ առաւօտն ի տաճարն
եւ ուսուցանէին։ Եկն քահանայա-
պետն եւ որ ընդ նմա, կոչեցին մի-
աբան զատեանն եւ զամենայն ծերա-
կոյտ որդւոցն Իսրայելի, եւ առաքե-
22 ցին ի բանտն ածել զնոսա։ Եւ իբրեւ
եկին սպասաւորքն, ոչ գտին զնոսա
ի բանտին․ դարձեալ անդրէն պատմե-
23 ցին, Եւ ասեն թէ Զբանտն գտաք
փակեալ ամենայն զգուշութեամբ, եւ
զպահապանսն՝ զի կային առ դրանն,
բացաք եւ ի ներքս զոք ոչ գտաք։
24 Իբրեւ լուան զբանս զայս [2]իշխանք
տաճարին եւ քահանայապետքն", հիա-
նային վասն նոցա, թէ զի՞նչ արդեւք
25 լինիցի այն։ Եւ եկն ոմն պատմեաց
նոցա թէ Ահա արքն զորս եդիք ի
բանտին՝ կան ի տաճարին, եւ ուսու-
26 ցանեն զժողովուրդն։ Յայնժամ եր-
թեալ իշխանն սպասաւորօքն հանդերձ՝
ած զնոսա ոչ բռնութեամբ, քանզի
երկնչէին ի ժողովրդենէն զի մի՛ քար-
27 կոծեսցին։ Եւ ածեալ զնոսա՝ կացու-
ցին յատենի․ եհարց զնոսա քահանա-
28 յապետն Եւ ասէ, Ո՞չ պատուիրելով
պատուիրեցաք ձեզ մի՛ ուսուցանել
յանուն յայն․ եւ արդ ահաւասիկ լցէք
զԵրուսաղէմ ուսմամբդ ձերով, եւ
կամիք ածել ի վերայ մեր զարիւն
զառնն զայնորիկ։
29 Պատասխանի ետ Պետրոս եւ առա-
քեալքն եւ ասեն, Հնազանդել պարտ
է Աստուծոյ առաւել քան մարդկան։
30 Աստուած հարցն մերոց յարոյց զՅի-
սուս զոր դուքն սպանէք կախեալ
31 զփայտէ։ Զնա Աստուած Առաջնորդ
եւ Փրկիչ բարձրացոյց աջով իւրով
տալ ապաշխարութիւն Իսրայելի եւ
32 թողութիւն մեղաց։ Եւ մեք եմք նորա
վկայք բանիցս այսոցիկ, եւ Հոգին
Սուրբ զոր ետ Աստուած հնազանդե-
33 լոց իւրոց։ Եւ նոքա իբրեւ լուան,
առատանային եւ խորհէին սպանանել
զնոսա։
34 ԲԱ․ Յարուցեալ ոմն ի մէջ ատենին,
փարիսեցի, որում անուն էր Գամա-
ղիէլ, օրէնսուսոյց, պատուական ամե-
նայն ժողովրդեանն, հրամայեաց առ-
կուրիկ մի [3]զարսն արտաքս տանել։
35 Եւ ասէ ցնոսա, Արք Իսրայելացիք,
հայեցարուք ի ձեզ վասն արանցս այ-
36 սոցիկ զինչ արժան իցէ գործել։ Յառաջ

[1]Յ-ջն․, ի հասարակաց բանտի

[2]Ոմն+, քահանայն և իշխան տաճարին և քա-
հանայապետքն

[3]Ոմն+, զառաքեալսն

քան զաւուրս զայսոսիկ յարեաւ Թեւ-
դաս ասել զանձնէ թէ իցէ ոմն. յոր
անկան արք թուով իբրեւ չորեք-
հարիւր, որ սպանաւ, եւ ամենեքեան
որ միաբանեալ էին ընդ նմա՝ քակե-
37 ցան եւ եղեն յոչինչ։ Յետ նորա յա-
րեաւ Յուդաս Գալիլեացի յաւուրս աշ-
խարհագրին, եւ ապստամբեցոյց ժո-
ղովուրդ բազում զկնի իւր. եւ նա
կորեաւ, եւ ամենեքեան որ նմայն
38 հաւանեալ էին՝ ցրուեցան։ Եւ զարդիս
ասեմ ձեզ, Ի բաց կացէք յարանցդ
յայդցանէ եւ թոյլ տուք դոցա, զի թէ
ի մարդկանէ իցէ խորհուրդդ այդ կամ
39 գործդ, քակտեսցի. Ապա թէ յԱստու-
ծոյ է, ոչ կարէք քակել զդոսա,
գուցէ եւ աստուածամարտք գտանի-
40 ցիք։ Հաւանեցան նմա, եւ կոչեցեալ
զառաքեալսն՝ զան հարին, եւ պատ-
ուիրեցին մի՛ եւս խօսել յանուն Յի-
41 սուսի, եւ արձակեցին զնոսա։ Եւ նո-
քա գնային խնդալով յերեսաց ատենին,
զի վասն [1]անուանն արժանի եղեն ա-
42 նարգելոյ։ Եւ զամենայն օր ի տաճա-
րին եւ տանսին ոչ դադարէին ու-
սուցանել եւ աւետարանել զՅիսուս
Քրիստոս։

## Գլ. Զ

1 Եւ յաւուրսն յայնոսիկ ի բազմանալ
աշակերտացն եղեւ տրտունջ Յունացւոց
առ Հեբրայեցիսն, զի արհամարհեալ
լինէին ի պաշտամանն հանապազորդի
2 այրիք նոցա։ Կոչեցին երկոտասանքն
զբազմութիւն աշակերտացն եւ ասեն,
Ոչ է հաճոյ մեզ թողուլ զբանն Աս-
3 տուծոյ եւ պաշտել զսեղանս։ Ընտրե-
ցէք, եղբարք, վկայեալս ի ձէնջ արս
[2]եւթն, զորս կացուսցուք ի վերայ պի-
4 տոյիցս այսոցիկ. Եւ մեք աղօթից եւ
պաշտաման բանին հպատակ լիցուք։
5 Եւ հաճոյ թուեցաւ բանն առաջի ա-
մենայն բազմութեանն. եւ ընտրեցին
զՍտեփանոս, այր լի հաւատով եւ
Հոգւով Սրբով, եւ զՓիլիպպոս եւ
զՊրոքորոն եւ զՆիկանովրա եւ զՏի-
մովնա եւ զՊարմենա եւ զՆիկողայոս,
6 զեկն Անտիոքացի. Զորս կացուցին
առաջի առաքելոցն, եւ աղօթս արար-
7 եալ՝ եդին ի վերայ նոցա զձեռս։ Եւ
բանն Աստուծոյ աճէր, եւ բազմանայր
թիւ աշակերտացն յոյժ յԵրուսաղէմ.
եւ բազում ժողովք ի քահանայիցն ան-
սային հաւատոցն։
8 ԲԲ. Ստեփանոս, այր լի [3]շնորհօք
եւ զօրութեամբ, առնէր արուեստս
եւ նշանս մեծամեծս ի ժողովրդեանն։
9 Յարեան ոմանք ի ժողովրդենէն, որ
կոչէր [4]Լիբէացւոց եւ Կիւրենացւոց.
եւ Աղեքսանդրացւոց եւ որ ի Կիլի-
կեցւոց եւ յԱսիա, վիճել ընդ Ստեփա-
10 նոսի. Եւ ոչ կարէին զդէմ ունել զի-
մաստութեանն եւ զհոգւոյն որով խօ-
11 սէր։ Յայնժամ հրապուրեցին արս ո-
մանս ասել թէ Լուաք զնորա խօսել
բանս հայհոյութեան ի Մովսէս եւ յԱս-
12 տուած։ Եւ խռովեցին զժողովուրդն
եւ զերիցունսն եւ զդպիրսն. եւ հաս-
եալ ի վերայ՝ յափշտակեցին զնա եւ
13 ածին յատեանն։ Եւ կացուցին վկայս
սուտս որ ասէին, Այրս այս ոչ դադա-
րէ խօսել բանս հայհոյութեան զտեղ-
14 ւոյն սրբոյ եւ զօրինացն։ Լուաք ի
դմանէ զի ասէր թէ Յիսուս Նազով-
րեցի, նա քակեսցէ զտեղիս զայս, եւ
փոխեսցէ զօրէնս զոր ետ մեզ Մովսէս։
15 Եւ հայեցեալ ի նա ամենեցուն որ նըս-
տէին յատենին, տեսին զերեսս նորա
իբրեւ զերեսս հրեշտակի։

## Գլ. Է

1 Ասէ. քահանայապետն՝ եթէ Արդարեւ
2 այդ ա՞յդպէս իցէ։ Եւ նա ասէ, Արք
եղբարք եւ հարք, լուարուք ինձ. Աս-
տուած փառաց երեւեցաւ հօր մերում
Աբրահամու մինչդեռ ի Միջագետս էր,
մինչչեւ [5]բնակեցուցեալ էր զնա՞ ի Խա-
3 ռան. եւ ասէ ցնա, Ել յերկրէ քումմէ
եւ յազգէ քումմէ, եւ եկ յերկիր զոր
4 ցուցից քեզ։ Յայնժամ ելեալ յերկրէն
Քաղդէացւոց բնակեցաւ ի Խառան, եւ
անտի յետ մեռանելոյ հօր նորա՝ փոխ-
եաց պանդխտեցոյց զնա յերկրիս յայս-
միկ, յորում դուք այժմ բնակեալ էք։
5 Եւ ոչ ետ նմա ժառանգութիւն ի սմա
եւ ոչ քայլ մի ոտին. եւ խոստացաւ

---

[1] Ոմանք, անուան Տեառն, այլք՝ անուան նորա
[2] Բազումք, եւթն, լի Հոգւով Սրբով և իմաստութեամբ
[3] Ոմանք, Հաւատով
[4] Յոմնս, Լիբերտինացւոց
[5] Յոմնս, բնակեալ էր նորա

տալ նմա զնա ի բնակութիւն, եւ զա-
ւակի նորա յետ նորա, մինչ ոչ գոյր
6 նորա որդի. Խօսեցաւ Աստուած այս-
պէս, թէ եղիցի զաւակ նորա պան-
դուխտ յօտար երկրի, եւ ծառայես-
ցեն զնա եւ չարչարեսցեն ամս
7 չորեքհարիւր: Եւ զազգն որում ծա-
ռայեսցեն՝ դատեցայց ես, ասէ Աս-
տուած, եւ յետ այսորիկ ելցեն եւ
պաշտեսցեն զիս ի տեղւոջս յայսմիկ:
8 Եւ ետ նմա ուխտ թլփատութեան.
եւ այսպէս ծնաւ զԻսահակ, եւ թլփա-
տեաց զնա յաւուր ութերորդի. եւ Ի-
սահակ՝ զՅակովբ, եւ Յակովբ՝ զեր-
9 կոտասան նահապետսն: Եւ նահա-
պետքն նախանձեալ ընդ Յովսեփայ՝
վաճառեցին յԵգիպտոս. եւ էր Աս-
10 տուած ընդ նմա, Եւ փրկեաց զնա
յամենայն նեղութեանց նորա, եւ ետ
նմա շնորհս եւ իմաստութիւն առաջի
Փարաւոնի արքային Եգիպտացւոց.
եւ կացոյց զնա իշխան Եգիպտացւոցն
11 եւ ամենայն տան նորա: Եւ եկն սով
յամենայն երկիրն Եգիպտոսի եւ ի Քա-
նան, եւ էր նեղութիւն մեծ, եւ ոչ
12 գտանէին կերակուր հարքն մեր: Եւ
լուեալ Յակովբայ թէ գտանի կերա-
կուր յԵգիպտոս, առաքեաց զհարսն
13 մեր յառաջագոյն: Եւ յերկրորդումն
ետ ծանօթս Յովսէփ եղբարց իւրոց.
եւ յայտնի եղեւ Փարաւոնի ազգն [1]Նո-
14 րա: Առաքեաց Յովսէփ եւ կոչեաց
զՅակովբ զհայր իւր եւ զամենայն ազ-
գատոհմն, ոգիս եւթանասուն եւ հինգ:
15 Եւ էջ Յակովբ յԵգիպտոս, եւ վախ-
16 ճանեցաւ ինքն եւ հարքն մեր: Եւ
փոխեցան ի Սիւքեմ եւ եդան յայրին
զոր առաւ Աբրահամ գնոց արծա-
թոյ յորդւոցն Եմովրայ ի Սիւքեմ:
17 Իբրեւ մերձեցաւ ժամանակ աւետեացն
զոր խոստացաւ Աստուած Աբրահա-
մու, աճեաց ժողովուրդն եւ բազմա-
18 ցաւ յԵգիպտոս. Մինչեւ յարեաւ այլ
թագաւոր յԵգիպտոս որ ոչ ճանաչէր
19 զՅովսէփ: Նա հնարեցաւ ազգին մե-
րում, եւ չարչարեաց զհարսն մեր առ-
նել ընկեցիկ զմանկունս նոցա զի մի՛
20 ապրեսցին: Յորում ժամանակի ծնաւ
եւ Մովսէս, եւ էր կայտառ առաջի
Աստուծոյ, որ եւ սնաւ ի տան հօր

[1]Բազումք, Ազգակցաց

21 իւրոյ ամիսս երիս: Եւ յընկեցիկն առ-
նել զնա՝ եբարձ զնա դուստրն Փարա-
ւոնի, եւ սնոյց զնա իւր յորդեգիրս:
22 Եւ վարժեցաւ Մովսէս ամենայն իմաս-
տութեամբ Եգիպտացւոցն, եւ էր զօ-
րաւոր բանիւք եւ գործովք իւրովք:
23 Իբրեւ լցաւ նորա քառասնամեայ ժա-
մանակ, անկաւ ի միտս նորա շրջել
զեղբարբք իւրովք, զորդւովքն Իսրա-
24 յէլի: Եւ տեսեալ զումն զրկեալ՝ զչարե-
ցաւ, եւ խնդրեաց զվրէժ զրկելոյն՝
25 սպանեալ զԵգիպտացին: Զմտաւ ածէր
թէ իմասցին եղբարք նորա, զի Աս-
տուած ի ձեռն նորա տալոց էր զփըր-
կութիւն նոցա, եւ նոքա ոչ իմացան:
26 Եւ ի վաղիւ անդր երեւեցաւ նոցա
մինչդեռ մարտնչէին, եւ վարեաց
զնոսա ի խաղաղութիւն, ասէ, Արք,
եղբարք էք, ընդէ՞ր զրկէք զմիմեանս:
27 Իսկ որ զրկէր զընկերն՝ մերժեաց զնա
եւ ասէ, Ո՞ կացոյց զքեզ իշխան եւ
28 դատաւոր ի վերայ մեր: Միթէ սպա-
նանե՞լ կամիցիս զիս զոր օրինակ սպա-
29 ներ երէկ զԵգիպտացին: Եւ փախեաւ
Մովսէս ի բանիցս յայսցանէ, եւ եղեւ
պանդուխտ յերկրին Մադիամու, ուր
ծնաւ երկուս որդիս:
30 ԲԳ. Եւ ի կատարել ամացն քառասու-
նից՝ երեւեցաւ նմա յանապատի լերինն
Սինայ հրեշտակ Տեառն ի բոց հրոյ մո-
31 րենւոյն: Եւ Մովսիսի տեսեալ՝ զար-
մացաւ ընդ տեսիլն, եւ ի մատչելն
32 նորա նշմարել՝ եղեւ ձայն Տեառն, Ես
եմ Աստուած հարց քոց, Աստուած
Աբրահամու եւ [2]Իսահակայ եւ Յա-
կովբայ՚՚. եւ զահի հարեալ Մովսէս՝
33 ոչ իշխէր հայել: Եւ ասէ ցնա Տէր,
Լոյծ զկօշիկս ոտից քոց, զի տեղիդ
յորում դուդ կացեր՝ երկիր սուրբ է:
34 Տեսանելով տեսի զչարչարանս ժողո-
վրդեան իմոյ որ յԵգիպտոս, եւ լուայ
հեծութեան նոցա եւ իջի փրկել զնո-
սա. եւ արդ եկ առաքեցից զքեզ յԵ-
35 գիպտոս: Զայն Մովսէս զոր ուրացան
եւ ասէին, Ո՞ կացոյց զքեզ իշխան եւ
դատաւոր ի վերայ մեր, զնա Աստուած
իշխան եւ փրկիչ առաքեաց ի ձեռն
հրեշտակին որ երեւեցաւ նմա ի մո-
36 րենւոջն: Նա եհան զնոսա՝ արարեալ

[2]Ոմանք, Աստուած Իսահակայ և Աստուած Յակովբայ

նշանս եւ արուեստս յերկրին Եգիպ-
տացւոց եւ ի Կարմիր ծովուն եւ յա-
37 նապատին ամս քառասուն։ Այս Մով-
սէս է որ ասաց ցորդիսն Իսրայէլի,
Մարգարէ յարուսցէ ձեզ Տէր Աստուած
ձեր յեղբարց ձերոց իբրեւ զիս, նմա
38 լուիջիք։ Սա է որ եղեւ յեկեղեցւոջն
յանապատին ընդ հրեշտակին, որ խօ-
սեցաւ ընդ նմա ի լերինն Սինայ եւ
ընդ հարսն մեր, որ ընկալաւ զպատ-
39 գամս կենդանիս տալ մեզ։ Որում ոչ
կամեցան հնազանդ լինել հարքն մեր,
այլ մերժեցին եւ դարձան սրտիւք իւր-
40 եանց յԵգիպտոս։ Եւ ասեն ցԱհարովն,
Արա մեզ աստուածս, որ երթիցեն
առաջի մեր. զի Մովսէսն այն որ ե-
հան զմեզ յերկրէն Եգիպտացւոց՝ ոչ
41 գիտեմք զի՛ եղեւ նմա։ Եւ արարին յա-
ւուրսն յայնոսիկ որթ, եւ մատուցին
զոհս կռոց, եւ ուրախ լինէին ի գործս
42 ձեռաց իւրեանց։ Դարձոյց Աստուած
եւ մատնեաց զնոսա ի պաշտօն զօրու-
թեանն երկնից, որպէս եւ գրեալ է ի
գիրս մարգարէից, Միթէ զոհս եւ պա-
տարա՞գս մատուցէք ինձ զամս քառա-
սուն յանապատին, տունդ Իսրայէլի.
43 Եւ առէք զխորանն Մողոքայ եւ զաստղն
[1]աստուածոյն Հռեմփայ, զպատկերսն՝
զոր արարէք երկիր պագանել նոցա.
եւ փոխեցից զձեզ յայն կոյս Բաբե-
44 լացւոց։ Խորանն վկայութեան էր ընդ
հարսն մեր յանապատին. որպէս հրա-
ման ետ որ խօսէրն ընդ Մովսիսի,
առնել զայն ըստ օրինակին զոր ետես։
45 Զոր եւ ընկալեալ բերէին հարքն մեր
հանդերձ Յեսուաւ ի վիճակ ազգացն,
զորս մերժեաց Աստուած յերեսաց
հարցն մերոց մինչեւ յաւուրս Դաւթի,
46 Որ եգիտ շնորհս առաջի Աստուծոյ,
եւ խնդրեաց գտանել զյարկս Աստու-
47 ծոյ Յակովբայ։ Նա եւ Սողոմովն շի-
48 նեաց նմա տուն։ Այլ ոչ եթէ Բարձրեալն
ի ձեռագործ տաճարս բնակէ. այլ որ-
49 պէս մարգարէն ասէ, Երկինք աթոռ
իմ են, եւ երկիր՝ պատուանդան ոտից
իմոց. որպիսի՞ տուն [2]շինիցէք ինձ,
ասէ Տէր, կամ զի՞նչ տեղի հանգըս-
50 տեան իմոյ. Ո՞չ ձեռն իմ արար զայս
51 ամենայն։ Խստապարանոցք եւ ան-
թլփատք սրտիւք եւ ականջօք, դուք
հանապազ Հոգւոյն Սրբոյ հակառակ
52 կայք, որպէս հարքն ձեր՝ եւ դուք։ Զո՞
ի մարգարէիցն ոչ հալածեցին հարքն
ձեր, եւ սպանին զայնոսիկ որ յառա-
ջագոյն պատմեցին վասն գալստեան
Արդարոյն, որոյ դուք այժմ մատնիչք
53 եւ սպանողք եղերուք։ Ոյք առէք զօ-
րէնս ի հրամանս հրեշտակաց, եւ ոչ
պահեցէք։
54 Եւ լուեալ զայս զայրանային ի սիրտս
իւրեանց, եւ կրճտէին զատամունս ի
55 վերայ նորա։ Եւ նա էր լի Հոգւով
Սրբով, հայեցաւ յերկինս եւ ետես
զփառս Աստուծոյ եւ զՅիսուս զի կայր
ընդ աջմէ Աստուծոյ, եւ ասէ, Ահա
տեսանեմ զերկինս բացեալ, եւ զՈրդի
մարդոյ զի կայ ընդ աջմէ Աստուծոյ։
56 Աղաղակեալ ի ձայն մեծ՝ խցին զա-
կանջս իւրեանց, եւ դիմեցին առ հա-
57 սարակ ի վերայ նորա։ Եւ հանեալ
արտաքոյ քաղաքին՝ քարկոծէին. եւ
վկայքն դնէին զձորձս իւրեանց առ
ոտս երիտասարդի միոջ որ կոչէր Սա-
58 ւուղ։ Եւ քարկոծ առնէին զՍտեփա-
նոս, որ կարդայր եւ ասէր, Տէր Յի-
59 սուս, ընկալ զոգի իմ։ Եդ ծունր,
աղաղակեաց ի ձայն բարձր, Տէր, մի՛
համարիր զոցա զայս մեղս։ Եւ զայս
իբրեւ ասաց, ննջեաց. եւ Սաւուղոս էր
կամակից սպանման նորա։

## ԳԼ. Ը

1 Եւ եղեւ յաւուր յայնմիկ հալածումն
մեծ ի վերայ եկեղեցւոյն յԵրուսաղէմ.
եւ ամենեքեան ցրուեցան ի գեղս Հրէ-
աստանի եւ Սամարիայ բաց յառաքե-
2 լոցն։ Եւ բարձին զՍտեփանոս արք
երկիւղածք, եւ արարին կոծ մեծ ի
վերայ նորա։
3 ԵԳ. Բայց Սաւղոս մնասակար էր ե-
կեղեցւոյն, ի տունս տունս մտանէր,
քարշեալ զարս եւ զկանայս՝ մատնէր
ի բանտ։
4 Եւ սփռեալքն շրջէին, աւետարա-
5 նէին զբանն։ Իսկ Փիլիպպոս իջեալ
ի քաղաքն Սամարացւոց՝ քարոզէր նո-
6 ցա զՔրիստոս։ Ունկն դնէին ժողո-
վուրդքն բանիցն Փիլիպպոսի միաբան՝
ի լսել նոցա եւ ի տեսանել զնշանսն
7 զոր առնէր։ Քանզի բազումք որ ու-
նէին զայսս պիղծս՝ աղաղակէին ի ձայն

[1] Ոմ-նք, աստուածոյն ձերոյ
[2] Յ-ջնն, շինիցէք

8 մեծ եւ կաղնէին։ Եւ բազում անդա-
9 մալոյծք եւ կաղք բժշկէին։ Եւ եղեւ
ուրախութիւն մեծ ի քաղաքին յայն-
միկ։ Այր ոմն Սիմոն անուն յառա-
ջագոյն էր ի քաղաքին, մոգէր եւ ապ-
շեցուցանէր զազգն Սամարացւոց, ա-
10 սել զանձնէ թէ իցէ մեծ ոմն։ Ցոր
հայէին ամենեքեան ի փոքուէ մինչեւ
ի մեծամեծս, եւ ասէին, Սա է զօրու-
11 թիւն Աստուծոյ որ կոչի մեծ։ Հայէին
ի նա վասն բազում ժամանակաց մո-
գութեամբքն ապշեցուցանելոյ զնոսա։
12 Բայց յորժամ հաւատացին Փիլիպպոսի
որ աւետարանէր վասն արքայութեանն
Աստուծոյ եւ անուանն Յիսուսի Քրիս-
տոսի, մկրտէին ամենեքեան արք եւ
13 կանայք։ Այլ եւ ինքն Սիմոն հա-
ւատաց, եւ մկրտեալ կանխէր առ Փի-
լիպպոս. տեսեալ զնշանսն եւ զմեծա-
մեծ զօրութիւնսն որք լինէին՝ զար-
14 մանայր։ Իբրեւ լուան որ յԵրուսաղէմ
առաքեալքն էին թէ եւ ի Սամարիա
ընկալան զբանն Աստուծոյ, առաքե-
ցին առ նոսա զՊետրոս եւ զՅովհան-
15 նէս. Որք իջեալ կացին յաղօթս ի վե-
րայ նոցա, որպէս զի առցեն զՀոգին
16 Սուրբ. Զի ցայնժամ չեւ եւս էր եւ
ոչ ի վերայ միոյ նոցա հասեալ, բայց
միայն մկրտեալք էին յանուն Տեառն
17 Յիսուսի։ Յայնժամ եդին զձեռս ի վե-
րայ նոցա, եւ առնուին Հոգի Սուրբ։
18 Տեսեալ Սիմոնի թէ ձեռս ի վերայ
դնելով առաքելոցն՝ տուեալ լինի Հո-
գին Սուրբ, մատոյց նոցա ինչս եւ
19 ասէ, Տուք եւ ինձ զիշխանութիւնս
զայս, զի յոյր վերայ դնիցեմ զձեռս՝
20 առցէ Հոգի Սուրբ։ Եւ Պետրոս ասէ
ցնա, Արծաթ քո ընդ քեզ լիցի ի կո-
րուստ, զի զպարգեւսն Աստուծոյ հա-
21 մարեցար ընչիւք ստանալ։ Ոչ գոյ քեզ
մասն եւ վիճակ ի բանիդ յայդմիկ,
քանզի սիրտ քո ոչ է ուղիղ առաջի
22 Աստուծոյ։ Ապաշխարեա դու ի չարեացդ
քոց յայդցանէ, եւ աղաչեա զՏէր,
թերեւս թողութիւն լիցի քեզ ի մեղ-
23 մնէ խորհրդոց սրտի քո։ Քանզի ի
դառնութիւն մաղձի եւ ի կնճիռս ա-
24 նիրաւութեան տեսանեմ զքեզ։ Պա-
տասխանի ետ Սիմոն եւ ասէ, Աղա-
չեցէք դուք վասն իմ զՏէր, զի մի՛ ինչ
եկեսցէ ի վերայ իմ յորոց դուքդ ա-
25 սացէք։ Եւ նոքա եդեալ վկայութիւն՝
խօսեցան զբանն Աստուծոյ, եւ դար-
ձան յԵրուսաղէմ. եւ ի բազում գիւղս
Սամարացւոցն աւետարանէին։
26 Բայց հրեշտակ Տեառն խօսեցաւ առ
Փիլիպպոս եւ ասէ, Արի եւ գնա դու
ի կողմն հարաւոյ ընդ ճանապարհ որ
իջանէ յԵրուսաղեմէ ի Գազա, զի այս
27 է անապատ։ Եւ յարեաւ գնաց. եւ
ահաւասիկ այր մի Եթէովպացի, ներ-
քինի հզօր Կանդակայ տիկնոջ Եթէով-
պացւոց, որ էր ի վերայ ամենայն գան-
ձուց նորա. որ եկեալ էր երկիր պա-
28 գանել յԵրուսաղէմ. Եւ անդրէն դար-
ձեալ եւ նստեալ ի կառս իւրում՝ ըն-
29 թեռնոյր զմարգարէն զԵսայի։ Ասէ
Հոգին ցՓիլիպպոս, Մատիր եւ յարեաց
30 ի կառսդ յայդոսիկ։ Եւ ընթացեալ Փի-
լիպպոս՝ լսէր զի ընթեռնոյր զԵսայի
մարգարէ. եւ ասէ, Գիտիցե՞ս արդեւք
31 զոր ընթեռնուցուս։ Եւ նա ասէ,
Զիա՞րդ կարիցեմ, եթէ ոչ ոք առաջ-
նորդեսցէ ինձ. եւ աղաչեաց զՓիլիպ-
32 պոս ելանել նստել ընդ նմա։ Եւ գլուխ
գրոցն զոր ընթեռնոյր՝ էր այս. Իբրեւ
զոչխար ի սպանդ վարեցաւ, եւ իբրեւ
զորոջ առաջի կտրչի իւրոյ անմռունչ՝
33 այնպէս ոչ բանայ զբերան իւր։ Ի խո-
նարհութեան նորա դատաստան նորա
բարձաւ, եւ զազգատոհմ նորա ո՞ պատ-
մեսցէ, զի բառնան յերկրէ կեանք նո-
34 րա։ Պատասխանի ետ ներքինին Փի-
լիպպոսի եւ ասէ, Աղաչեմ զքեզ, վասն
ո՞յր ասէ մարգարէն զայս, վասն ի՞ւր
35 եթէ վասն այլոյ ուրուք։ Եբաց Փիլիպ-
պոս զբերան իւր, եւ սկսեալ ի գրոցս
յայսցանէ՝ աւետարանեաց նմա զՅի-
36 սուս։ Իբրեւ երթային զճանապարհայն,
եկին ի ջուր ինչ, եւ ասէ ներքինին,
Ահաւասիկ ջուր, զի՞նչ արգելու զիս
37 ի մկրտելոյ։ [1]Եւ ասէ ցնա, Եթէ հա-
ւատաս բոլորով սրտիւ քով, մարթ է։
Պատասխանի ետ եւ ասէ, Հաւատամ
եթէ Յիսուս Քրիստոս է Որդի Աս-
38 տուծոյ»։ Եւ հրամայեաց կացուցանել
զկառսն. եւ իջին երկոքեան ի ջուրն,
Փիլիպպոս եւ ներքինին, եւ մկրտեաց
39 զնա։ Եւ իբրեւ ելին ի ջրոյ անտի, [2]Հո-
գին Սուրբ եկն ի վերայ ներքինւոյն,
եւ հրեշտակ Տեառն յափշտակեաց»

---

[1]Այս համար պակասի ի բազումս
[2]Բազումք, Հոգի Տեառն յափշտակեաց

զՓիլիպպոս, եւ ոչ եւս ետես զնա ներ-
քինին, եւ գնայր զճանապարհ իւր ու-
40 րախութեամբ։ Բայց Փիլիպպոս գտաւ
յԱզովտոս. եւ շրջեալ աւետարանէր
ամենայն քաղաքացն՝ մինչեւ ի գալ
նորա ի Կեսարիա։

## ԳԼ. Թ

1 ԲԶ. Իսկ Սաւղոս տակաւին [1]լցեալ
սպառնալեօք եւ սպանմամբ աշակեր-
տացն Տեառն", մատուցեալ առ քահա-
2 նայապետն՝ խնդրեաց ի նմանէ թուղթս
ի Դամասկոս առ ժողովուրդսն. որպէս
թէ զոք գտցէ զայնր ճանապարհաւ,
արս կամ կանայս, կապեալս ածցէ յե-
3 րուսաղէմ։ Եւ ընդ երթալն նորա՝ ե-
ղեւ մերձենալ ի Դամասկոս. յանկար-
ծակի շուրջ զնովաւ փայլատակեաց
4 լոյս յերկնից։ Եւ անկեալ յերկիր՝ լուաւ
բարբառ որ ասէր ցնա, Սաւուղ, Սա-
5 ւուղ, զի՞ հալածես զիս։ Եւ ասէ, Ո՞վ
ես, Տէր։ Եւ նա ասէ, Ես եմ Յիսուս
6 զոր դու հալածես.[2] Այլ յարի կաց
եւ մուտ ի քաղաքդ, եւ պատմեսցի
7 քեզ զինչ պարտ իցէ առնել։ Իսկ արքն
որ ընդ նմայն երթային, կային ան-
չչունչ, զձայնն միայն լսէին, բայց
8 տեսանէին եւ ոչ ինչ։ Յարեաւ Սաւ-
ղոս յերկրէ անտի, եւ աչօք բացօք
ոչ զոք տեսանէր. զձեռանէ առեալ նո-
9 րա՝ մուծին ի Դամասկոս։ Եւ էր անդ
աւուրս երիս եւ ոչ տեսանէր. եւ ոչ
եկեր եւ ոչ արբ։
10 Եւ էր ոմն աշակերտ ի Դամասկոս
Անանիա անուն. ասէ ցնա Տէր ի տես-
լեան, Անանիա։ Եւ նա ասէ, Ահաւա-
11 սիկ եմ, Տէր։ Եւ ասէ ցնա Տէր,
Յարի կաց եւ գնա ընդ փողոցն որ
կոչի Ուղիղ, եւ խնդրեսցես յապա-
րանսն Յուդայ Սաւղոս անուն զՏար-
12 սոնացի. զի կայ դեռ յաղօթս։ Եւ ե-
տես ի տեսլեան այր մի Անանիա ա-
նուն, մտեալ եւ եդեալ ի վերայ նորա
13 զձեռն, որպէս զի տեսցէ։ Պատասխա-
նի ետ Անանիա, Տէր, լուայ ի բազ-
մաց վասն առնն այնորիկ, որչափ ա-
րար չարիս սրբոց քոց յԵրուսաղէմ.
14 Եւ աստ ունի իշխանութիւն ի քահա-
նայապետիցն, կապել զամենեսեան որ
15 կարդան զանուն քո։ Ասէ ցնա Տէր,
Երթ դու, զի անօթ ընտրութեան է
ինձ նա, կրել զանուն իմ առաջի հե-
թանոսաց եւ թագաւորաց եւ որդւոցն
16 Իսրայելի։ Քանզի ես իսկ ցուցից նմա
որչափ պարտ իցէ նմա չարչարել վասն
17 անուան իմոյ։ Եւ գնաց Անանիա եւ
եմուտ յապարանսն, եւ եդեալ ի վե-
րայ նորա ձեռս՝ ասէ, Սաւուղ եղբայր,
[3]ի վեր հայեաց," Տէր առաքեաց զիս,
Յիսուս որ երեւեցաւ քեզ ի ճանա-
պարհին յորում գայիրն, որպէս զի
18 տեսցես եւ լցցիս Հոգւով Սրբով։ Եւ
վաղվաղակի անկան յաչաց նորա իբ-
րեւ կեղեւանք. [4]ետես եւ յարեաւ
19 մկրտեցաւ։ Եւ առեալ կերակուր՝ զօ-
րացաւ. եւ եղեւ ի Դամասկոս ընդ
աշակերտսն աւուրս ինչ։
20 Եւ վաղվաղակի ի ժողովուրդսն քա-
րոզեաց զՅիսուս, թէ սա է Որդին
21 Աստուծոյ։ Զարմացեալ էին ամենե-
քեան որ լսէին, եւ ասէին, Ո՞չ սա էր
որ աւար հարկանէր յԵրուսաղէմ զայ-
նոսիկ, որ կարդային [5]զանուն Յի-
սուսի". եւ այսր նմին իրի եկեալ է,
զի կապեալս զնոսա տարցի առ քահա-
22 նայապետսն։ Այլ Սաւղոս առաւել եւս
զօրանայր եւ յաղթահարէր զՀրեայսն
որ բնակեալ էին ի Դամասկոս. եւ
խելամտեցուցանէր թէ սա է Քրիս-
23 տոսն։ Իբրեւ կատարէին աւուրք բա-
զումք, խորհեցան Հրեայքն սպանանել
24 զնա։ Յայտնեցաւ Սաւղոսի նենգու-
թիւն նոցա, քանզի պահէին զդրունսն
ի տուէ եւ ի գիշերի որպէս զի սպան-
25 ցեն զնա։ Եւ առեալ զնա աշակեր-
տացն ի գիշերի՝ ընդ պարիսպն կախ-
եալ իջուցին փանդակաւ։
26 Իբրեւ եկն Սաւղոս յԵրուսաղէմ,
ընդելանէր յարել յաշակերտսն. եւ ա-
մենեքեան երկնչէին ի նմանէ, չհաւա-
27 տային թէ իցէ աշակերտ։ Բայց Բառ-
նաբաս առեալ զնա՝ ած առ առաքեալսն,
եւ պատմեաց նոցա որպէս ի ճանա-
պարհին ետես զՏէր, եւ զի խօսեցաւ

---

[1] Յ.ՆՆ, շնչեալ սպառնալիս և սպանումն յաշակերտսն Տեառն
[2] Ոմանք յաւելուն, խիստ է քեզ ընդդէմ խթանի աքացել։ (6)Նա զարհուրեալ և անչչունչ լեալ ասաց, Տէր, զի՞նչ կամիս առնել ինձ։ Եւ ասէ ցնա Տէր,
[3] ի ծագումն պայծառ
[4] Ոմանք, ետես առժամայն
[5] Յ.ՆՆ, զանունս զայս

ընդ նմա, եւ զի ի Դամասկոս համար-
28 ձակեցաւ յանուն Յիսուսի։ Եւ էր ընդ
նոսա ի մտանել եւ ելանել յԵրուսա-
ղէմ, համարձակեալ յանուն [1]Տեառն։
29 Խօսէր եւ վիճէր ընդ Յոյնսն. եւ նոքա
30 խորհէին սպանանել զնա։ Եւ իմացեալ
եղբարց՝ իջուցին զնա ի Կեսարիա, եւ
առաքեցին զնա ի Տարսոն։
31 Բայց եկեղեցին ընդ ամենայն Հրէ-
աստան եւ ի Սամարիա եւ ի Գալիլեա
ունէր խաղաղութիւն, շինեալ եւ եր-
թեալ զհետ երկիւղի Տեառն եւ մխի-
թարութեամբ Հոգւոյն Սրբոյ բազ-
մանայր։
32 ԲԷ. Եւ եղեւ ի շրջելն Պետրոսի առ
ամենեքումբք, իջանել նմա եւ առ
սուրբսն որ բնակեալ էին ի Լիւդդա։
33 Եւ եգիտ անդ այր մի, որում անուն
էր Ենեա, ութեմեան դնէր ի մահիճս
34 անդամալոյծ։ Եւ ասէ ցնա Պետրոս,
Ենեա, բժշկէ զքեզ [2]Տէր Յիսուս Քրիս-
տոս՝, արի եւ քեզէն թօթափեա զան-
կողինս քո։ Եւ վաղվաղակի յարեաւ։
35 Եւ տեսին զնա ամենեքեան որ բնա-
կեալ էին ի Լիւդդա եւ ի Սարոնա,
36 որք եւ դարձան իսկ ի Տէր։ Եւ ի Յոպ-
պէ էր կին ոմն աշակերտեալ անուն
Տաբիթա, (որ թարգմանեալ կոչի Այ-
ծեմնիկ.) սա էր լի գործովք բարեօք
37 եւ ողորմութեամբք զոր առնէր։ Եւ
եղեւ յաւուրսն յայնոսիկ հիւանդանալ
նմա եւ մեռանել. լուացին զնա եւ
38 եդին ի վերնատան։ Եւ մերձ էր
Լիւդդա ի Յոպպէ. աշակերտացն լու-
եալ եթէ Պետրոս անդ է, առաքեցին
երկուս արս առ նա աղաչել զի մի՛
39 դանդաղեսցի գալ առ նոսա։ Եւ յա-
րուցեալ Պետրոս եկն ընդ նոսա, զոր
իբրեւ եկն՝ հանին ի վերնատունն. եւ
կացին շուրջ զնովաւ այրիքն ամենայն,
լային եւ ցուցանէին զձորձս եւ զհան-
դերձս, որչափ առնէր նոցա Այծեմ-
40 նիկն։ Եւ հանեալ արտաքս զամենե-
սեան Պետրոսի՝ եդ ծունր, եկաց յա-
ղօթս, եւ դարձաւ ի մարմինն եւ ասէ,
Տաբիթա, արի կաց [3]յանուն Տեառն
Յիսուսի Քրիստոսի՝։ Եւ նա եբաց
զաչս իւր, եւ տեսեալ զՊետրոս նստաւ
41 կանգուն։ Ջեռն ետ նմա եւ յարոյց
զնա. կոչեաց զսուրբսն եւ զայրիսն,
42 առաջի կացոյց զնա կենդանի։ Եւ յայտ-
նի եղեւ ընդ ամենայն Յոպպէ, եւ հա-
43 ւատացին բազումք ի Տէր։ Եւ եղեւ
աւուրս բազումս լինել նմա ի Յոպպէ
առ ումեմն Սիմովնի խաղախորդի։

## ԳԼ. Ժ

1 ԳԱ. Այր մի էր ի Կեսարիա անուն
Կոռնելիոս, հարիւրապետ ի գնդէ որ
2 կոչէր Իտալացի. Բարեպաշտօն եւ եր-
կիւղած յԱստուծոյ ամենայն տամբ իւ-
րով, առնէր ողորմութիւնս բազումս
ի ժողովրդեանն, եւ յաղօթս կայր առ
3 Աստուած յամենայն ժամ։ Ետես ի
տեսլեան յայտնապէս զիններորդ ժա-
մու աւուրն զհրեշտակ Աստուծոյ, զի
մտանէր առ նա եւ ասէր ցնա, Կոռ-
4 նելիէ։ Եւ նա հայեցեալ ընդ նա՝ զար-
հուրեցաւ եւ ասէ, Զի՞ է, Տէր։ Եւ
ասէ ցնա, Աղօթք քո եւ ողորմու-
թիւնք քո ելին յիշատակաւ առաջի
5 Աստուծոյ։ Եւ արդ յղեա արս ի Յոպ-
պէ եւ կոչեա զՍիմովն զոմն որ կոչի
6 Պետրոս. Նա մտեալ է առ Սիմովնի
ումեմն խաղախորդի, որոյ է տունն
7 մերձ ի ծով[4]։ Եւ իբրեւ գնաց հրեշ-
տակն որ խօսէր ընդ նմա, կոչեաց
երկուս ի ծառայիցն եւ զինուոր մի
բարեպաշտօն ի սպասաւորացն իւրոց,
8 Եւ պատմեալ նոցա զամենայն՝ առա-
քեաց զնոսա ի Յոպպէ։
9 Եւ ի վաղիւ անդր ի ճանապարհ ան-
կանել նոցա եւ մօտ ի քաղաքն լինել,
ել Պետրոս ի տանիսն կալ յաղօթս
10 զվեցերորդ ժամուն։ Քաղցեաւ եւ կա-
մէր ճաշակել. եւ ի պատրաստելն նո-
ցա՝ եղեւ ի վերայ նորա զարմացումն։
11 Եւ տեսանէր զերկինս բացեալ, եւ զշո-
րեցունց տանոց կապեալ անօթ ինչ
իբրեւ զկտաւոյ մեծի, իջեալ նստեալ
12 ի վերայ երկրի. Յորում էին ամենայն
[5]չորքոտանիք եւ սողունք երկրի՝ եւ
13 թռչունք երկնից։ Եւ եղեւ ձայն առ
14 նա, Արի, Պետրոս, զեն եւ կեր։ Եւ
Պետրոս ասէ, Քաւ լիցի, Տէր, զի ոչ

[1] Ոմանք, Տեառն Յիսուսի
[2] Յայն օրինակաց ոմանք, Տէր Յիսուս, այլք, Յիսուս Քրիստոս
[3] ի Յունին պակասէ

[4] Ոմանք յաւելուն, նա խօսեսցի քեզ զինչ պարտ իցէ քեզ առնել
[5] Ոմանք, չորքոտանիք երկրի և գազանք և սողունք,

երբեք կերայ խառնակ ինչ եւ անսուրբ։
15 Ձայն եղեւ կրկին անգամ առ նա, Զոր
Աստուած սրբեաց՝ դու մի՛ պղծեր։
16 Այս եղեւ երիցս, եւ վերացաւ անօթն
17 յերկինս։ Եւ մինչդեռ զարմացեալ էր
ընդ միտս Պետրոս թէ զի՞նչ իցէ տե-
սիլն զոր ետես, ահա արքն առաքեալք
ի Կոռնելեայ հարցին զապարանիցն Սի-
18 մովնի, կացին առ դրանն. կոչեցին
եւ հարցանէին, եթէ Սիմովն որ կոչի
19 Պետրոս աստ մտեա՞լ իցէ։ Եւ մինչ-
դեռ Պետրոս զմտաւ ածէր վասն տես-
լեանն, ասէ Հոգին ցնա, Ահաւասիկ
20 [1]արք ոմանք" խնդրեն զքեզ։ Այլ արի
էջ եւ երթ ընդ նոսա առանց իրիք
21 խղճելոյ, զի ես առաքեցի զնոսա։ Եւ
իբրեւ էջ Պետրոս առ նոսա, ասէ,
Ահաւասիկ ես եմ զոր խնդրէքն. զի՞նչ
22 իրք են վասն որոյ եկիքդ։ Եւ նոքա
ասեն, Կոռնելիոս հարիւրապետ, այր
արդար եւ երկիւղած յԱստուծոյ, վկայ-
եալ յամենայն ազգէն Հրէից, հրաման
առ ի հրեշտակէ սրբոյ կոչել զքեզ ի
23 տուն իւր եւ լսել բանս ի քէն։ Կոչ-
եաց զնոսա ի ներքս եւ առ իւր ագոյց։
Եւ ի վաղիւ անդր յարուցեալ Պետ-
րոս գնաց ընդ նոսա, եւ ոմանք յեղ-
բարց անտի որ ի Յոպպէ էին՝ եկին
24 ընդ նմա։ Եւ ի վաղիւ անդր մտին
ի Կեսարիա. եւ Կոռնելիոս մնայր նո-
ցա, կոչեցեալ զազգատոհմն իւր եւ
զկարեւոր բարեկամսն։
25 ԳԲ. Եւ եղեւ ի մտանելն Պետրոսի՝
ընդ առաջ եղեւ նմա Կոռնելիոս, ան-
26 կեալ առ ոտսն երկիր պագանէր։ Եւ
Պետրոս կանգնեաց զնա եւ ասէ, Յոտն
27 կաց, եւ ես ինքն մարդ եմ։ Եւ խօ-
սելով ընդ նմա եմուտ ի ներքս. եւ
գտանէր անդ ժողովեալ զբազումս։
28 Եւ ասէ ցնոսա, Դուք ինքնին գիտէք
ո՛րպէս անմարթ է առն Հրէի հպել
կամ մերձենալ առ այլազգի. եւ ինձ
Աստուած եցոյց մի՛ զոք խառնակ կամ
29 անսուրբ ասել ի մարդկանէ։ Վասն
այսորիկ եւ առանց ընդ բանս ինչ ա-
ծելոյ եկի կոչեցեալ. բայց արդ հար-
ցանեմ, Յի՞նչ պէտս կոչեցէք զիս։
30 Եւ Կոռնելիոս ասէ, Յառաջ քան զչորս
աւուրս մինչ ցայս [2]ժամ կայի յաղօթս
յիննն ժամու ի տան իմում. եւ ահա այր
մի եկն եկաց առաջի իմ ի հանդերձս
31 սպիտակս, եւ ասէ, Կոռնելիէ, լսելի
եղեն աղօթք քո, եւ ողորմութիւնք
32 քո յիշեցան առաջի Աստուծոյ. Եւ արդ
յղեա ի Յոպպէ եւ կոչեա զՍիմովն որ
կոչեցեալն է Պետրոս. սա մտեալ է
ի տուն Սիմովնի ուրումն խաղախոր-
դի մերձ ի ծովն. [3]որ եկեսցէ եւ խօ-
33 սեսցի ընդ քեզ։" Եւ ես իսկ եւ իսկ
յղեցի առ քեզ, դու բարւոք արարեր
զի եկիր. արդ ամենեքին մեք առաջի
Աստուծոյ կամք լսել զամենայն, որ
հրամայեալ է քեզ ի Տեառնէ։
34 Եբաց Պետրոս զբերան իւր եւ ասէ,
Ճշմարտութեամբ հասեալ եմ, զի ոչ
գոյ ակնառութիւն առ ի յԱստուծոյ.
35 Այլ յամենայն ազգս որ երկնչին ի նմա-
նէ եւ գործէ զարդարութիւն, ընդու-
36 նելի է նմա։ [4]Զբանն առաքեաց որդ-
ւոցն Իսրայելի աւետարանել զխաղա-
ղութիւն ի ձեռն Յիսուսի Քրիստոսի.
37 (սա է ամենայնի Տէր.) Դուք ինքնին
գիտէք զբանն որ եղեւ ընդ ամենայն
Հրէաստան սկսեալ ի Գալիլեէ, յետ
մկրտութեանն զոր քարոզեաց Յով-
38 հաննէս. ԶՅիսուս որ ի Նազարեթէ,
զոր օծ Աստուած Հոգւով Սրբով եւ
զօրութեամբ, որ շրջեցաւ բարի առ-
նել եւ բժշկել զամենայն ըմբռնեալսն
ի Սատանայէ, զի Աստուած էր ընդ
39 նմա։ Եւ մեք վկայ եմք ամենայնի զոր
արար յերկրին Հրէաստանի եւ յԵրու-
սաղէմ. զոր եւ սպանին կախեալ զփայ-
40 տէ։ Զնա Աստուած յարոյց յերրորդ
41 աւուր, եւ ետ նմա յայտնի լինել, Ոչ
ամենայն ժողովրդեանն, այլ մեզ վկա-
յիցս յառաջագոյն ընտրելոցս յԱստու-
ծոյ, որք եւ կերաք եւ արբաք ընդ
նմա յետ յարութեան նորա ի մեռե-
42 լոց։ Եւ պատուիրեաց մեզ քարոզել
ժողովրդեանն եւ վկայութիւն գնել,
թէ նա է սահմանեալն յԱստուծոյ դա-
43 տաւոր կենդանեաց եւ մեռելոց։ Նմա
ամենայն մարգարէք վկայեն, թողու-
թիւն մեղաց առնուլ անուամբ նորա
ամենայն հաւատացելոց ի նա.
44 Եւ մինչդեռ խօսէր Պետրոս զբանս
զայս, հանգեաւ Հոգին Սուրբ ի վերայ

[1]Բազումք, արք երեք
[2]Ոմանք, ժամ պահէի եւ
[3]Յոմանս պակասի
[4]Ոմանք, Զբանն զոր

45 ամենեքեան որ լսէին զբանն։ Զարմա-
ցան որք ի թլփատութենէ անտի հա-
ւատացեալք եկեալ էին ընդ Պետրոսի,
զի եւ ի հեթանոսս պարգեւք Հոգւոյն
46 Սրբոյ զեղան։ Քանզի լսէին ի նո-
ցանէ խօսել լեզուս եւ մեծացուցանել
47 զԱստուած։ Յայնժամ պատասխանի
ետ Պետրոս, Միթէ զջուրն ոք արգե-
լուլ կարէ՞ առ ի չմկրտելոյ զսոսա,
որք եւ զՀոգին Սուրբ ընկալան որպէս
48 եւ մեք։ Եւ հրամայեաց նոցա մկրտել
յանուն [1]Յիսուսի Քրիստոսի՝․ յայն-
ժամ աղաչեցին զնա լինել անդ ա-
ւուրս ինչ։

## ԳԼ․ ԺԱ

1 Գգ․ Լուան առաքեալքն եւ եղբարք
որ էին ի կողմանս Հրէաստանի, զի
եւ ի հեթանոսս ընկալան զբանն Աս-
2 տուծոյ։ Բայց յորժամ ել Պետրոս յԵ-
րուսաղէմ, խզճէին ի նմանէ որ ի թլ-
փատութենէ անտի [2]հաւատացեալքն
3 էին․ Եւ ասէին եթէ [3]Եմուտ առ արս
4 անթլփատս եւ եկեր՝ ընդ նոսա։ Եւ
սկսաւ Պետրոս պատմել նոցա կար-
5 գաւ եւ ասէ, Ես էի ի քաղաքին ի
Յոպպէ յաղօթս, եւ տեսանէի ի զար-
մացման տեսիլ, իջանել անօթ ինչ իբ-
րեւ կտաւոյ մեծի զչորեցունց տանոց
կախեալ յերկնից, եւ եհաս մինչեւ առ
6 իս։ Յոր սչուցեալ հայէի, եւ տեսի
զչորքոտանիս երկրի եւ զգազանս եւ
7 զսողունս եւ զթռչունս երկնից։ Եւ
լուայ բարբառ որ ասէր ցիս, Արի,
8 Պետրոս, զեն եւ կեր։ Եւ ասեմ, Քաւ
լիցի, Տէր, զի խառնակ ինչ եւ ան-
սուրբ ոչ երբեք եմուտ ի բերան իմ։
9 Պատասխանի ետ ինձ երկիցս անգամ
բարբառն յերկնից, Զոր Աստուած
սրբեաց՝ դու մի՛ խառնակ համարիր։
10 Այս եղեւ երիցս, եւ վերացաւ ամե-
11 նայն դարձեալ յերկինս։ Եւ ահա ան-
դէն երեք արք եկին կացին առ ապա-
րանիցն ուր եմն էի, առաքեալք ի Կե-
12 սարիայ առ իս։ Եւ ասէ ցիս Հոգին
երթալ ընդ նոսա եւ մի՛ ինչ խզճել․
եկին ընդ իս եւ սոքա վեցեքին եղ-
բարքս, եւ մտաք ի տունն առնն այ-

[1] Ոմանք, Տեառն
[2] ի Յունէն պակասէ
[3] Բազումք, Մտեր առ արս անթլփատս և կերար

13 նորիկ։ Եւ պատմեաց մեզ ո՛րպէս ե-
տես զհրեշտակն ի տան իւրում զի
կայր եւ ասէր ցնա, Առաքեա ի Յոպպէ,
եւ կոչեա զՍիմոն զկոչեցեալն Պետ-
14 րոս․ Որ խօսեսցի բանս ընդ քեզ, ո-
րովք կեցցես դու եւ ամենայն տուն
15 քո։ Եւ իբրեւ սկսայ խօսել, եկն Հո-
գին Սուրբ ի վերայ նոցա, որպէս եւ
16 ի վերայ մեր ի սկզբանն։ Յիշեցի զբանն
Տեառն զոր ասէրն, Յովհաննէս մկր-
տեաց ի ջուր, բայց դուք մկրտիցիք ի
17 Հոգին Սուրբ։ Իսկ արդ եթէ զհասա-
րակաց պարգեւն ետ Աստուած եւ նո-
ցա որպէս եւ մեզ՝ ի հաւատալն ի Տէր
Յիսուս Քրիստոս, ես զի՞նչ կարող էի
18 արգելուլ զԱստուած։ Եւ լուեալ զայս
լռեցին, եւ փառաւոր առնէին զԱս-
տուած եւ ասէին, Ուրեմն եւ ի հե-
թանոսս ետ Աստուած զապաշխարու-
թիւն կենաց։
19 Եւ ցրուեալքն ի նեղութենէն որ ե-
ղեւ ի վերայ Ստեփանոսի՝ հասին մին-
չեւ ի Փիւնիկէ եւ ի Կիպրոս եւ յԱն-
տիոքիա․ ոչ ումեք խօսէին զբանն,
20 բայց միայն Հրէից։ Եւ էին ոմանք
ի նոցանէ արք Կիպրացիք եւ Կիւրե-
նացիք, որք մտեալ յԱնտիոք խօսէին
ընդ Յոյնսն աւետարանեալ զՏէր Յի-
21 սուս։ Եւ էր ձեռն Տեառն ընդ նոսա,
եւ բազմութիւն հաւատացելոց դար-
22 ձաւ ի Տէր։ Լուր եղեւ բանս այս յա-
կանջս եկեղեցւոյն որ էր յԵրուսաղէմ
վասն նոցա, եւ առաքեցին զԲառնա-
23 բաս մինչեւ յԱնտիոք․ Որ իբրեւ եկն
եւ ետես զշնորհսն Աստուծոյ, ուրախ
եղեւ, եւ մխիթարէր զամենեսեան յօ-
ժարութեամբ սրտի կալ նոցա ի Տէր։
24 Զի էր այր զուարթամիտ եւ լի Հոգւով
Սրբով եւ հաւատովք․ եւ յաւելաւ
25 ժողովուրդ բազում Տեառն։ Եւ ել ի
Տարսոն խնդրել զՍաւղոս, եւ գտեալ
26 զնա ած յԱնտիոք։ Եւ եղեւ նոցա
զամն ողջոյն ժողովել յեկեղեցին եւ
ուսուցանել ժողովուրդ բազում, եւ
անուանել նախ յԱնտիոք [4]զաշակերտ-
եալսն Քրիստոնեայս։
27 Գդ․ Ընդ աւուրսն ընդ այնոսիկ իջին
յԵրուսաղեմէ մարգարէք յԱնտիոք։
28 Յարուցեալ մի ոմն ի նոցանէ անուն
Ագաբոս՝ նշանակեաց Հոգւովն սով մեծ

[4] Յոյնն, զաշակերտսն

լինել ընդ ամենայն աշխարհ, որ եղեւ
29 առ Կղաւդեաւ ։ Բայց յաշակերտաց
անտի, որպէս զիարդ կարող ոք էր՝ իւ-
րաքանչիւր ոք ի նոցանէ որոշեցին ա-
ռաքել ի պէտս եղբարցն որ բնակեալ
30 էին ի Հրէաստանի ․ Զոր եւ արարին
իսկ առաքեալ առ երիցունսն ի ձեռն
Բառնաբայ եւ Սաւղոսի ։

## ԳԼ․ ԺԲ

1 ԳԵ․ Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ
արկ Հերովդէս արքայ ձեռն չարչարել
2 զոմանս յեկեղեցւոյն ։ Եւ սպան զՅա-
կովբոս, զեղբայր Յովհաննու, սրով ։
3 Եւ տես եթէ հաճոյ է Հրէիցն, յաւել եւս
ունել զՊետրոս ․ եւ էին աւուրքն բա-
4 ղարջակերաց ։ Զոր իբրեւ կալաւ, եդ
ի բանտի, եւ մատնեաց չորից չորրոր-
դաց զինուորաց պահել զնա ․ եւ կա-
մէր յետ զատկին ածել զնա ժողովր-
5 դեանն ։ Եւ Պետրոս ի պահեստի էր ի
բանտին, եւ աղօթք սաստիկ լինէին յե-
կեղեցւոյն վասն նորա առ Աստուած ։
6 Իբրեւ կամեցաւ զնա ածել Հերովդէս,
ի գիշերին յայնմիկ էր Պետրոս ի քուն
ի մէջ երկուց զինուորաց՝ կապեալ
կրկին շղթայիւք, եւ պահապանքն ա-
7 ռաջի դրանն պահէին զբանտն ։ Եւ
ահա հրեշտակ Տեառն եկն եկաց ի վե-
րայ, եւ լոյս ծագեաց ի տանն, եւ
խթեաց զկողն Պետրոսի, յարոյց զնա
եւ ասէ, Արի վաղվաղակի ․ եւ անկան
8 շղթայքն ի ձեռաց նորա ։ Եւ ասէ ցնա
հրեշտակն, Ած զգօտի քո, եւ արկ
զհողաթափս յոտս քո ․ եւ արար այն-
պէս ․ եւ ասէ ցնա, Արկ զձորձս քո
9 եւ եկ զկնի իմ ։ Եւ ելեալ երթայր
զհետ, եւ ոչ գիտէր եթէ ճշմարիտ իցէ
որ ինչ լինէր ի հրեշտակէն ․ զի հա-
10 մարէր երազ տեսանել ։ Եւ իբրեւ անց-
ցին նոքա ըստ մի պահ եւ ըստ եր-
կուս, եկին մինչեւ ի դուռնն երկաթի
որ հանէր ի քաղաքն ․ որ ինքնին բա-
ցաւ նոցա, եւ մտեալ անցին ընդ փո-
ղոց մի ․ եւ վաղվաղակի ի բաց եկաց
11 ի նմանէ հրեշտակն ։ Եւ Պետրոս իբրեւ
ի միտս եկն, ասէ, Արդ գիտեմ ճըշ-
մարիտ եթէ առաքեաց Տէր զհրեշտակ
իւր, եւ փրկեաց զիս ի ձեռաց Հե-
րովդի եւ յամենայն ակնկալութենէ
12 ժողովրդեանն Հրէից ։ Եւ լեալ ի միտս
եկն ի տուն Մարեմու մօր Յովհաննու,
որ կոչեցաւն Մարկոս ․ ուր էին բա-
զումք ժողովեալ եւ աղօթս առնէին ։
13 Եւ ի բախել զդուրս տանն, մատեաւ
աղախին մի, ունկն դնէր, որում ա-
14 նուն էր Հռովդէ ։ Եւ ծանուցեալ
զձայնն Պետրոսի՝ ի խնդալոյն ոչ եբաց
զդուռնն, ի ներքս ընթացեալ պատ-
մեաց թէ Պետրոս առ դրանն կայ ։
15 Նոքա ասեն ցնա, Մոլիս ․ եւ նա ե՛ւս
սնդէր թէ այսպէս է ․ եւ նոքա ասէին,
16 Հրեշտակ նորա իցէ ։ Եւ Պետրոս ստէպ
բախէր ․ իբրեւ բացին, տեսին զնա
17 եւ զարմացան ։ Եւ նա ձեռամբ ցու-
ցանէր նոցա լռել, եւ [1]պատմեաց որ-
պէս եւ Տէր եհան զնա ի բանտէն, եւ
ասէ, Պատմեցէք Յակոբայ եւ եղբարց
18 դայս ․ եւ ելեալ գնաց յայլ տեղի ։ Եւ
իբրեւ այգ եղեւ, էր խռովութիւն մեծ
ի մէջ զինուորացն, զի՞ արդեւք Պետ-
19 րոսն եղեւ ։ Իսկ Հերովդէս իբրեւ
խնդրեաց զնա եւ ոչ եգիտ, հարցեալ
զպահապանսն՝ հրամայեաց տանել ․
եւ իջեալ ի Հրէաստանէ ի Կեսարիա
եւ անդ լինէր ։
20 Եւ էր Հերովդէս ցասմամբ ընդ Տիւ-
րացիս եւ ընդ Սիդոնացիս ․ եւ նոքա
առ հասարակ եկին առ նա, եւ ի բանի
արարեալ զԲղաստոս սենեկապետ ար-
քայի, խնդրէին զխաղաղութիւն, վասն
կերակրելոյ երկրին նոցա յարքու-
21 նուստ ։ Յաւուր միում յերեւելում
Հերովդէս զգեցեալ էր զհանդերձ թա-
գաւորութեան եւ նստէր յատենի, եւ
22 խօսէր ընդ նոսա հրապարակաւ ։ Եւ
ամբոխն աղաղակէր թէ Աստուծոյ
23 բարբառ է, եւ ոչ մարդոյ ։ Եւ անդէն
եհար զնա հրեշտակ Տեառն, փոխա-
նակ զի ոչ ետ փառս Աստուծոյ ․ եւ
եղեալ որդնալից՝ սատակեցաւ ։
24 Եւ բանն Աստուծոյ աճէր եւ բազ-
մանայր ։
25 ԳԶ․ Բառնաբաս եւ Սաւղոս դար-
ձան յԵրուսաղեմէ, իբրեւ կատարեցին
զպաշտօնն ․ առեալ էր ընդ իւրեանս եւ
զՅովհաննէս որ կոչեցեալն էր Մարկոս ։

## ԳԼ․ ԺԳ

1 Էին ոմանք յԱնտիոք ըստ եկեղեցւոյն

[1]Ոմն․, պատմեաց նոցա

մարգարէք եւ վարդապետք, Բառնա-
բաս եւ Շմաւոն կոչեցեալն Նիգէր,
եւ Ղուկիոս Կիւրենացի եւ Մանայէն
դայեկորդի Հերովդի չորրորդապետի,
2 եւ Սաւղոս: Մինչդեռ ի պաշտաման
Տեառն կային եւ պահէին, ասէ Հոգին
Սուրբ, Որոշեցէք ինձ զԲառնաբաս եւ
զՍաւղոս ի գործ յոր կոչեցեալ է իմ
3 զդոսա: Յայնժամ պահեալ եւ աղօթս
արարեալ եդին զձեռս ի վերայ նոցա
եւ արձակեցին:
4 Եւ նոքա առաքեալք ի Հոգւոյն Սրբ-
ոյ՝ իջին ի Սելեւկիա, եւ անտի նա-
5 ւեցին ի Կիպրոս: Եւ հասեալ ի Սա-
ղամինա պատմէին զբանն Աստուծոյ
ի ժողովուրդս Հրէից. ունէին եւ
6 զՅովհաննէս պաշտօնեայ: Շրջեալ ընդ
ամենայն կղզին մինչեւ ի Պափոս, գտին
անդ այր զոմն մոգ սուտ մարգարէ
Հրեայ, որում անուն էր Բարյեսու.
7 Որ էր ընդ փոխանակի բդեշխին Սերգ-
եայ Պաւղոսի, առն իմաստնոյ. նորա
աղաչեալ զԲառնաբաս եւ զՍաւղոս
8 խնդրէր լսել զբանն Աստուծոյ: Ընդդէմ
եկաց նոցա Եղիմաս մոգ, քանզի այս-
պէս թարգմանի անուն նորա. խնդրէր
շրջել զփոխանակ բդեշխին ի հաւա-
9 տոց: Իսկ Սաւղոս որ եւ Պաւղոսն՝
լցեալ Հոգւով Սրբով հայեցաւ ի նա,
10 Եւ ասէ, Ով լի ամենայն նենգութեամբ
եւ խորամանկութեամբ, որդի Սա-
տանայի, թշնամի ամենայն արդարու-
թեան, ո՞չ լռես ի թիւրելոյ զճանա-
11 պարհս Տեառն զուղիղս: Եւ արդ՝ ահա
ձեռն Տեառն ի վերայ քո, եւ եղիցիս
կոյր՝ չտեսանել զարեւ մինչեւ ի ժա-
մանակ մի. եւ անդէն անկաւ ի վե-
րայ նորա մէգ եւ խաւար, եւ շրջեալ
12 խնդրէր առաջնորդս: Յայնժամ տես-
եալ փոխանակի բդեշխին զլինելն որ ե-
ղեն՝ հաւատաց, զարմացեալ ընդ վար-
դապետութիւնն Տեառն:
13 Եւ ամբարձեալ ի Պափեայ Պաւղոս-
եանց՝ եկին ի Պերգէ Պամփիւլեայ.
Յովհաննէս մեկնեալ ի նոցանէ՝ դար-
14 ձաւ յԵրուսաղէմ: Եւ նոքա գնացեալ
ի Պերգեայ՝ եկին յԱնտիոք Պիսիդեայ.
եւ մտեալ ի ժողովուրդն յաւուր շա-
15 բաթու՝ նստան: Եւ յետ ընթեռնլոյ
զօրէնսն եւ զմարգարէս, առաքեցին առ
նոսա ժողովրդապետքն եւ ասեն, Արք
եղբարք, եթէ իցէ ի ձեզ բանք մխի-
թարութեան առ ժողովուրդդ, խօսե-
ցարուք:
16 Եւ յոտն եկաց Պաւղոս շարժեաց
զձեռն եւ ասէ, Արք Իսրայելացիք եւ
որք երկնչիք յԱստուծոյ, լուարուք:
17 Աստուած ժողովրդեանս այսորիկ Իս-
րայելի ընտրեաց զհարսն մեր, եւ զժո-
ղովուրդն բարձրացոյց ի պանդխտու-
թեան յերկրին Եգիպտացւոց, եւ բա-
18 զուկ բարձր եհան զնոսա անտի: Եւ
իբրեւ քառասնամեայ ժամանակ կե-
19 րակրեաց զնոսա յանապատի: Եւ քակ-
եալ ազգս եւթն յերկրին Քանանու՝
ժառանգեցոյց նոցա զերկիր [1]նոցա իբ-
20 րեւ ամս չորեքհարիւր եւ յիսուն: Եւ
յետ այսորիկ՝՝ ետ նոցա դատաւորս
21 մինչեւ ի Սամուէլ մարգարէ: Եւ ան-
տի յառաջ խնդրեցին թագաւոր, եւ
ետ նոցա Աստուած զՍաւուղ որդի
Կիսեայ՝ այր յազգէ Բենիամինի ամս
22 քառասուն: Եւ իբրեւ փոխեաց զնա,
յարոյց նոցա զԴաւիթ թագաւոր, ո-
րում եւ ասաց վկայութեամբ, Գտի
զԴաւիթ որդի Յեսսեայ այր ըստ սրտի
իմում, որ արասցէ զամենայն զկամս
23 իմ: Ի սորա զաւակէ Աստուած ըստ
աւետեացն յարոյց Իսրայելի զՓրկիչն
24 Յիսուս. Ըստ յառաջագոյն քարոզու-
թեանն Յովհաննու առաջի երեսաց
մտի նորա մկրտութիւն ապաշխա-
րութեան ամենայն ժողովրդեանն Իս-
25 րայելի: Եւ իբրեւ լնոյր Յովհաննէս
զընթացսն, ասէր, Զո՞ ոք կարծէք զի-
նէն թէ իցեմ. չեմ ես այն, այլ ահա
գայ զկնի իմ, որում չեմ արժանի զկօ-
26 շիկս ոտիցն լուծանել: Արք եղբարք,
որդիք Աբրահամեան ազգին, եւ որ
ի ձեզ երկիւղածք իցեն յԱստուծոյ,
ձեզ բանս այս փրկութեան առաքե-
27 ցաւ: Բայց որ բնակեալ են յԵրուսա-
ղէմ, եւ իշխանք նոցա անծանօթ եղեն
ի նմանէ, եւ [2]ըստ բարբառոյ՝՝ մարգա-
րէիցն, որ զամենայն շաբաթս ըն-
28 թեռնուին, դատեալ կատարեցին. Եւ
ոչ մի ինչ պատճառ մահու գտեալ՝
խնդրեցին ի Պիղատոսէ սպանանել զնա:
29 Եւ իբրեւ կատարեցին զամենայն որ
վասն նորա գրեալ էր՝ իջուցեալ ի փայ-
30 տէն եդին ի գերեզմանի: Այլ Աստուած

[1] Ս-ն+, նոցա: (20) Եւ յետ այսորիկ իբրեւ ամս չորեքհարիւր և յիսուն
[2] Յ-ռն, ի բարբառոյ

յարոյց զնա ի մեռելոց. որ երեւեցաւ
31 աւուրբք բազմօք այնոցիկ Որ ելեալ
էին ընդ նմա ի Գալիլեէ յԵրուսաղէմ.
որք եւ արդ իսկ վկայք են նորա առ
32 ժողովուրդն։ Եւ մեք ձեզ աւետարա-
նեմք զխոստումն որ առ հարսն եղեալ
33 էր։ Զի զնոյն Աստուած կատարեաց
առ մեզ որդիս նոցա՝ յարուցեալ զՅի-
սուս, որպէս եւ ի Սաղմոսին գրեալ է
յերկրորդում, Որդի իմ ես դու, եւ ես
34 այսօր ծնայ զքեզ։ Եւ զի յարոյց զնա
ի մեռելոց, եւ ոչ եւս դառնալոց է յա-
պականութիւն, այսպէս ասէ թէ Տաց
ձեզ զսրբութիւնսն Դաւթի զհաւա-
35 տարիմս։ Քանզի եւ ի միւսումն ասէ,
Ոչ տացես Սրբոյ քում տեսանել զա-
36 պականութիւն։ Այլ Դաւիթ յազգի
անդ իւրում պաշտեաց եւ ի կամս Աս-
տուծոյ ննջեաց, եւ յաւելաւ առ հարս
37 իւր եւ ետես զապականութիւն։ Բայց
զոր Աստուածն յարոյց՝ ոչ ետես զա-
38 պականութիւն։ Յայտնի լիցի ձեզ,
արք եղբարք, զի սովաւ ձեզ թողու-
39 թիւն մեղաց աւետարանի. Եւ յամե-
նայնէ յորմէ ոչ կարացէք օրինօքն
Մովսիսի արդարանալ՝ սովաւ ամե-
40 նայն որ հաւատայ արդարանայ։ Զգոյշ
կացէք, զուցէ եկեսցէ ի վերայ ձեր որ
41 ասացեալն է ի մարգարէս. Տեսէք, ար-
համարհոտք, եւ զարմացարուք եւ
եղծարուք, զի գործ մի գործեմ ես
յաւուրս ձեր, գործ՝ որում ոչ հաւա-
տայցէք, եթէ ոք պատմեսցէ ձեզ։
42 Եւ իբրեւ ելին անտի, աղաչէին ի
միւսում շաբաթու խօսել նոցա զնոյն
43 բանս։ Իբրեւ արձակեցաւ ժողո-
վուրդն, զհետ երթային բազումք ի
Հրէից անտի եւ ի պաշտօնէիցն եկա-
մտից զՊաւղոսի եւ զԲառնաբայ. որք
խօսէին ընդ նոսա, եւ հաւանեցու-
ցանէին զնոսա կալ մնալ ի շնորհսն
Աստուծոյ։
44 ԴԱ. Եւ ի գալ միւսոյ շաբաթուն,
գրեթէ ամենայն քաղաքն ժողովեցաւ
45 լսել զբանն Աստուծոյ։ Իբրեւ տեսին
Հրեայքն զամբոխն՝ լցան նախանձու,
եւ ընդդէմ դարձեալ ասացելոցն ի Պաւ-
46 ղոսէ՝ հայհոյէին։ Համարձակեալ Պաւ-
ղոսի եւ Բառնաբայ՝ ասէին, Առ ձեզ
նախ պարտ էր խօսել զբանն Աստու-
ծոյ. եւ քանզի դուք մերժէք զնա,
եւ ոչ արժանիս համարիք զձեզ կենացն
յաւիտենականաց, ահաւասիկ դառ-
47 նամք ի հեթանոսս։ Զի այսպէս պատ-
ուիրեաց մեզ Տէր. Եդի զքեզ ի լոյս
հեթանոսաց՝ լինել քեզ ի փրկութիւն
48 մինչեւ ի ծագս երկրի։ Զայս լուեալ
հեթանոսացն ուրախ լինէին, եւ փա-
ռաւոր առնէին զբանն Տեառն. եւ հա-
ւատացին որք էին կարգեալ ի կեանսն
49 յաւիտենականս։ Եւ շրջէր բանն Աս-
50 տուծոյ ընդ ամենայն գաւառն։ Բայց
Հրեայքն գրգռեցին զպաշտօնեայ կա-
նայս զպատուս, եւ զգլխաւորս քաղա-
քին, եւ յարուցեալ հալածանս ի վերայ
Պաւղոսի եւ Բառնաբայ՝ հանին զնոսա
51 ի սահմանացն իւրեանց։ Եւ նոցա թօ-
թափեալ զփոշի ոտից ի վերայ նոցա՝
52 եկին յԻկոնիոն։ Եւ աշակերտքն լնուին
խնդութեամբ եւ Հոգւով Սրբով։

## ԳԼ. ԺԴ

1 Եւ եղեւ յԻկոնիոն ի միասին մտանել
նոցա ի ժողովուրդ Հրէիցն եւ խօսել
նոյնպէս, մինչեւ հաւատալ Հրէից եւ
2 Յունաց բազմաց յոյժ։ Բայց անհաւան
Հրեայքն յարուցին եւ չարացուցին
զանձինս հեթանոսացն ի վերայ եղբարց։
3 Բազում ժամանակս շրջէին, համար-
ձակեալք [1]Տեառն վկայութեամբ, բա-
նի շնորհաց իւրոց, եւ տալ" նշանս
եւ արուեստս լինելոյ ի ձեռս նոցա։
4 Եւ եղեն հերձուածք բազմութեան քա-
ղաքին, ոմանք էին ի Հրեայսն, եւ
5 ոմանք յառաքեալսն։ Իբրեւ եղեւ դի-
մել հեթանոսացն եւ Հրէից իշխանօքն
իւրեանց ի թշնամանել եւ ի քարկոծել
6 զնոսա, Ազդ եղեալ նոցա՝ փախեան ի
քաղաքսն Լիկայոնացւոց ի Լիւստրա
եւ ի Դերբէ եւ շուրջ զգաւառաւն,
եւ անդ աւետարանէին։
7 ԴԲ. Եւ այր մի Լիւստրացի տկար
յոտից նստէր՝ կաղ յորովայնէ մօր իւ-
8 րոյ, որոյ երբեք չէր գնացեալ։ Սա
լուաւ զխօսսն Պաւղոսի, որոյ հայե-
ցեալ ի նա եւ տեսեալ թէ ունի հա-
9 ւատս փրկութեան, Ասէ մեծաձայն,
[2]Քեզ ասեմ յանուն Տեառն մերոյ Յի-
սուսի Քրիստոսի," Յոտն կաց ի վերայ
ոտից քոց ուղիղ. եւ վազվազէր եւ

---

[1]Յայլն., ի Տէր որ վկայէր բանի շնորհաց իւրոց, տուեալ
[2]Ի քաղուածս պակասէ

10 զնայր։ Եւ ժողովրդոցն տեսեալ զոր
արարն Պաւղոս՝ բարձին զձայնս իւր-
եանց Լիկայոնարէն եւ ասեն, Աս-
տուածք նմանեալք մարդկան իջին առ
11 մեզ։ Եւ կոչէին զԲառնաբաս Դիոս,
եւ զՊաւղոս՝ Հերմէս, քանզի նա էր
12 առաջնորդ բանին։ Իսկ քուրմն Դիայ
որ կայր առաջի քաղաքին, ցուլս եւ
պսակս հասուցեալ ի դրունսն՝ հանդերձ
13 բազմութեամբքն կամէր զոհել։ Եւ
լուեալ առաքելոցն Բառնաբայ եւ Պաւ-
ղոսի, պատառեալ զհանդերձս իւրեանց՝
արտաքս վազեցին [1]յամբոխէն. աղա-
14 ղակէին Եւ ասէին, Արք, զի՞նչ գոր-
ծէք զայդ. մեք ձեզ նմանօղք կարեօք
մարդիկ եմք, աւետարանել ձեզ յայդ-
պիսի ունայնութեանց դառնալ յԱս-
տուած կենդանի, որ արար զերկինս
եւ զերկիր եւ զծով եւ զամենայն որ
15 ի նոսա։ Որ յանցեալ ազգսն թոյլ ետ
ամենայն հեթանոսաց գնալ ի ճանա-
16 պարհս իւրեանց։ Եւ սակայն ոչ եթէ
առանց վկայութեան զինքն եթող՝ բա-
րերարութեամբն տալ յերկնից ձեզ
անձրեւս եւ ժամանակս պտղաբերս,
լնուլ կերակրովք եւ ուրախութեամբ
17 զսիրտս ձեր։ Եւ զայս ասացեալ՝ հազիւ
լռեցուցանէին զժողովուրդսն ի չզոհե-
լոյ նոցա. [2]այլ գնալ յիւրաքանչիւր
տեղիս։"
18 Դգ. Եւ ի շրջելն նոցա եւ յուսու-
ցանել, եկին հասին յԱնտիոքէ եւ յԻ-
կոնիոնէ Հրեայք. [2]եւ ի մինել նոցա
համարձակութեամբ," պատրեցին զժո-
ղովուրդսն [2]ի բաց կալ ի նոցանէ, եւ
ասէին թէ Ոչինչ ճշմարտութիւն ա-
սեն, այլ զամենայն ստեն". եւ քար-
կոծեալ զՊաւղոս՝ քարշեցին արտաքս
քան զքաղաքն, եւ համարէին զնա
19 մեռեալ։ Եւ ի պատել զնովաւ աշա-
կերտացն՝ յարեաւ եմուտ ի քաղաքն,
եւ ի վաղիւ անդր ել Բառնաբաւ հան-
20 դերձ ի Դերբէ։ Աւետարանեալ ի քա-
ղաքին յայնմիկ եւ աշակերտեալ զբա-
զումս՝ դարձան ի Լիւստրա եւ յԻկո-
21 նիոն եւ յԱնտիոքիա, Հաստատել զան-
ձինս աշակերտելոյն եւ մխիթարել կալ
հաստատուն ի հաւատսն. եւ թէ՝ Բա-
զում նեղութեամբք պարտ է մեզ մտա-
22 նել յարքայութիւնն Աստուծոյ։ Ձեռ-
նադրեցին նոցա ըստ եկեղեցւոյ՝ երի-
ցունս, աղօթս արարեալ հանդերձ
պահովք՝ յանձն արարին զնոսա Տեառն
23 յոր հաւատացեալ էին։ Եւ շրջեալ ընդ
24 Պիսիդիա եկին ի Պամփիլիա։ Եւ խօ-
սեցեալ ի Պերգէ զբանն Տեառն՝ իջին
25 յԱտտալիա։ Եւ անտի նաւարկեալ
գնացին յԱնտիոք, ուստի էին յանձն
արարեալ շնորհացն Աստուծոյ ի գործն
26 զոր կատարեցին։ Եկեալ եւ ժողովեալ
զեկեղեցին՝ պատմեցին որչափ արար
Աստուած ընդ նոսա. եւ զի եբաց հե-
27 թանոսաց զդուռն հաւատոց։ Շրջէին
ժամանակս ոչ սակաւս ընդ աշա-
կերտսն։

## Դլ. ԺԵ

1 Դդ. Եւ ոմանք իջեալ ի Հրէաստանէ
ուսուցանէին զեղբարս, Եթէ ոչ թլփա-
տիք ըստ օրինացն Մովսիսի՝ ոչ կարէք
2 ապրել։ Եւ ի լինել ոչ սակաւ հակա-
ռակութեան եւ խնդրոյ Պաւղոսի եւ
Բառնաբայ ընդ նոսա, եդին ելանել
Պաւղոսի եւ Բառնաբայ եւ ոմանց ի
նոցանէ առ առաքեալսն եւ երիցունս
յԵրուսաղէմ վասն խնդրոյն այնորիկ։
3 Նոքա յուղարկեալք յեկեղեցւոյն՝ շրջե-
ցան ընդ Փիւնիկէ եւ ընդ Սամարիա.
պատմէին զդարձն հեթանոսաց, եւ
առնէին ուրախութիւն մեծ ամենայն
4 եղբարց։ Եւ հասեալ յԵրուսաղէմ, ըն-
կալեալք յեկեղեցւոյն եւ յառաքելոցն
եւ յերիցանց՝ պատմեցին որչափ ինչ
5 արար ընդ նոսա Աստուած։ Ցարեան
ոմանք ի հերձուածոյն փարիսեցւոց հա-
ւատացեալք, եւ ասեն թէ Պարտ է
թլփատել զդոսա, եւ պատուիրել պա-
հել զօրէնսն Մովսիսի։
6 Եւ ժողովեցան առաքեալքն եւ ե-
րիցունք տեսանել վասն բանիս այսո-
7 րիկ։ Եւ յետ բազում խնդիր լինելոյ
յառն եկաց Պետրոս եւ ասէ ցնոսա,
Արք եղբարք, դուք ինքնին գիտէք,
զի յաւուրցն առաջնոց ի միջի ձերում
ընտրեաց Աստուած բերանով իմով լսել
հեթանոսաց բանին աւետարանի եւ
8 հաւատալ։ Եւ սրտագէտն Աստուած
վկայեաց նոցա, տալով նոցա զՀոգին
9 Սուրբ որպէս եւ մեզ։ Եւ ոչինչ ընտ-
րութիւն արար ի մէջ նոցա եւ մեր,
հաւատովք սրբեալ զսիրտս նոցա։

---

[1] Ցոյցն, յամբոխն    [2] ի բազումս պակասի

10 Արդ ընդէ՞ր փորձէք զԱստուած, դնել
լուծ ի վերայ պարանոցի աշակերտացն,
զոր ոչ հարքն մեր եւ ոչ մեք կարա-
11 ցաք բառնալ։ Այլ շնորհօքն Տեառն
Յիսուսի Քրիստոսի հաւատամք ապ-
րել, զոր օրինակ եւ նոքա։
12 Լռեաց ամենայն ժողովուրդն եւ
լսէին Բառնաբայ եւ Պաւղոսի պատմե-
լոյն, որչափ արար Աստուած նշանս
եւ արուեստս ի հեթանոսս ի ձեռն
նոցա։
13 ԴԵ. Եւ յետ լռելոյն նոցա պատաս-
խանի ետ Յակոբոս եւ ասէ, Արք եղ-
14 բարք, լուարուք ինձ. Շմաւոն պատ-
մեաց որպէս յառաջագոյն Աստուած
այց արար առնուլ ժողովուրդ ի հե-
15 թանոսաց անուան իւրոյ։ Եւ այսմ
միաբանին բանք մարգարէիցն որպէս
16 եւ գրեալ է; Յետ այսորիկ դարձայց
եւ շինեցից զյարկն Դաւթի զանկեալն,
եւ զկործանեալսն նորա վերստին շի-
17 նեցից, եւ կանգնեցից զնա. Որպէս
զի խնդրեսցեն մնացորդք մարդկան
զՏէր, եւ ամենայն հեթանոսք յորոց
վերայ կոչեցեալ է անուն իմ, ասէ Տէր,
18 որ առնէ զայս ամենայն, Յայտնի [1]է
19 ի յաւիտեանցն"։ Վասն որոյ եւ ես
իրաւունս համարիմ մի՛ նեղել զայնո-
սիկ որք ի հեթանոսացն դառնան առ
20 Աստուած։ Այլ առաքել թուղթս առ նոսա
խորշել ի կերակրոց կռոց եւ ի պոռնը-
կութենէ եւ ի մեռելոտւոյ եւ յարենէ։
21 Զի Մովսէս յազգաց առաջնոց ըստ
քաղաքաց զքարոզիչսն իւր ունի՝ ի
ժողովսն ըստ ամենայն շաբաթու ց ըն-
թերցեալ։
22 Յայնժամ հաճոյ թուեցաւ առաքե-
լոցն եւ երիցանցն ամենայն եկեղե-
ցեաւ ն, արս ընտրեալս ի նոցանէ ա-
ռաքել յԱնտիոք ընդ Պաւղոսի եւ ընդ
Բառնաբայ, զՅուդա զկոչեցեալն Բար-
սաբա եւ զՇիղա՝ [2]արս զլխաւորս.
23 Գրեալ առ եղբարս" ի ձեռն նոցա զայս
ինչ.
Առաքեալք եւ երիցունք եւ եղբարք,
յԱնտիոք եւ ի Սիւրիա եւ ի Կիլիկիա
եղբարցդ որ ի հեթանոսացդ էք, ող-
24 ջոյն։ Քանզի լուաք թէ ոմանք իբրեւ

[1]Որմն., ենի յաւիտենից Տեառն ամենայն գործք իւր

[2]Յօյնն, արս զլխաւորս ի մէջ եղբարց. (23) Գրեալ

ի մէնջ խռովեցուցին զձեզ բանիւք
խախտել զանձինս ձեր, ասեն թլփա-
տել եւ պահել զօրէնսն, որոց ոչ հրա-
25 մայեցաք, Հաճոյ թուեցաւ մեզ միա-
բան ժողովելոցս, արս ընտրեալս յղել
առ ձեզ ընդ սիրելիս մեր, ընդ Բառ-
26 նաբայ եւ ընդ Պաւղոսի, Արք՝ որք
մատնեցին զանձինս իւրեանց վասն
անուան Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
27 տոսի։ Արդ առաքեցաք զՅուդա եւ
զՇիղա, եւ նոցա ի բանից զնոյն պատ-
28 մել։ Զի հաճոյ թուեցաւ Հոգւոյն Սըր-
բոյ եւ մեզ մի՛ ինչ աւելի բեռն դնել
ձեզ, բայց միայն ի կարեւորացս յայ-
29 սոցիկ. Ի բաց կալ ի զոհելոյ կռոց եւ
յարենէ եւ ի հեղձուցելոյ եւ ի պոռնը-
կութենէ. յորոց պահեալ զանձինս
բարւոք գործէք. ողջ լերուք։
30 Եւ նոքա արձակեալք իջին յԱնտի-
ոք, եւ ժողովեալ զժողովուրդն՝ ե-
31 տուն զթուղթն։ Եւ ընթերցեալ ու-
րախ եղեն ի վերայ մխիթարութեանն։
32 Յուդա եւ Շիղա, զի եւ նոքա մար-
գարէք էին, բանիւք բազմօք մխիթա-
33 րեցին զեղբարս եւ հաստատեցին։ Եւ
եղեալ անդ ժամանակս՝ արձակեցան
խաղաղութեամբ յեղբարց [3]առ առա-
34 քեալսն"։ [4]Եւ հաճոյ թուեցաւ Շիղայի
35 մնալ անդէն։" Բայց Պաւղոս եւ Բառ-
նաբաս շրջէին յԱնտիոք, ուսուցանել
եւ աւետարանել եւ այլովք բազմօք
զբանն Տեառն։
36 ԴԶ. Իսկ յետ աւուրց ինչ ասէ Պաւ-
ղոս ցԲառնաբաս, Դարձցուք եւ շրջես-
ցուք զեղբարբք ըստ ամենայն քաղա-
քաց յորս քարոզեցաք զբանն Տեառն
37 թէ որպէս ունիցին։ Բառնաբաս կա-
մէր առնուլ եւ զՅովհաննէս զկոչե-
38 ցեալն Մարկոս. Բայց Պաւղոս աղաչէր
թէ զմեկնեալն ի նոցանէ ի Պամփիւ-
լեայ եւ չեկեալն ընդ նոսա ի գործն
39 մի՛ առնուլ ընդ իւրեանս։ Եւ եղեւ
զմաութիւն՝ մինչեւ մեկնել նոցա ի
միմեանց, Բառնաբայ առնուլ զՄար-
40 կոս նաւել ի Կիպրոս։ Եւ Պաւղոսի
ընտրեալ զՇիղա եւ՝ յանձն արարեալ
շնորհացն Աստուծոյ յեղբարց անտի,
41 Եւ շրջէր ի կողմանս Ասորւոց եւ Կի-
լիկեցւոց, եւ հաստատէր զեկեղեցիսն։

[3]Որմն., առ որս առաքեցինն զնոսա

[4]Յօմանս պակասի

## ԳԼ. ԺԶ

1 Եկն հասս ի Դերբէ եւ ի Լիւստրա․
եւ ահա աշակերտ ոմն էր անդ անուն
Տիմոթէոս, որդի կնոջ Հրէի հաւա-
2 տացելոյ եւ հօր հեթանոսի․ Որ վկա-
յեալ էր ի Լիւստրացւոց եւ յԻկոնաց-
3 ւոց եղբարց։ Զսա կամեցաւ Պաւղոս
ընդ իւր տանել, եւ առեալ թլփատեաց
զնա վասն Հրէիցն որ էին ի տեղիսն
յայնոսիկ, քանզի գիտէին ամենեքին
4 զհայր նորա թէ հեթանոս էր։ Իբրեւ
անցանէին ընդ քաղաքսն, աւանդէին
նոցա պահել զհրամանսն պատուիրեալս
յառաքելոցն եւ յերիցանցն որք յԵրու-
5 սաղէմ։ Եւ եկեղեցիքն հաստատէին
ի հաւատս, եւ յաւելուին ի թիւն հա-
նապազօր։
6 Դէ․ Եւ շրջեցան ընդ Փռիւգիա եւ
ընդ կողմանս Գաղատացւոց, արգե-
լեալք ի Հոգւոյն Սրբոյ խօսել զբանն
7 յԱսիա։ Բայց եկեալ առ Միւսեաւ՝
թեւակոխէին երթալ ի Բիւթանիա, եւ
ոչ համարձակեաց նոցա Հոգին Յիսու-
8 սի։ Եւ անցեալ ըստ Միւսիա՝ իջին
9 ի Տրովադա։ Եւ տեսիլ երեւեցաւ ի
գիշերի Պաւղոսի․ այր ոմն Մակեդո-
նացի կայր, աղաչէր զնա եւ ասէր,
Անցեալ ի Մակեդոնիա օգնեսցես մեզ։
10 Եւ իբրեւ զտեսիլն ետես, վաղվաղակի
խնդրեցաք ելանել ի Մակեդոնիա, տե-
ղեկացեալք թէ հրաւիրեաց զմեզ Տէր
աւետարանել նոցա։
11 Եւ ելեալ ի Տրովադայ դէպ ուղիղ
գնացաք ի Սամոթրակէ, եւ ի վաղիւ
12 անդր ի Նոր քաղաք․ Եւ անտի ի Փի-
լիպպուս, որ է առաջին վիճակ Մա-
կեդոնացւոց՝ քաղաք Կողոնիա․ եւ
անդ ի քաղաքին դադարեալ մեր ա-
13 ւուրս ինչ, Յաւուր շաբաթու ելաք
արտաքոյ քաղաքին առ գետափն ուր
համարէին աղօթս մատուցանել, եւ
նստեալ խօսէաք ընդ ժողովեալ կա-
14 նայսն։ Եւ կին ոմն անուն Լիդիա,
ծիրանավաճառ ի Թիւատիր քաղաքէ,
երկիւղած յԱստուծոյ, լուաւ, զորոյ
Տէր իսկ եբաց զսիրտն անսալ խօսիցն
15 Պաւղոսի։ Եւ իբրեւ մկրտեցաւ ինքն
եւ տուն իւր, աղաչէր եւ ասէր, Եթէ
համարիք զիս հաւատացեալ Տեառն,
մտեալ ի տուն իմ ագերուք․ եւ բռնա-
դատեաց տարաւ զմեզ։
16 Եւ եղեւ մինչ երթայաք մեք յա-
ղօթս, պատահեաց մեզ աղախին ոմն
զոր ունէր այս հարցուկ․ որ շահս բա-
զումս տայր տեարանց իւրոց մոլեգնելովն։
17 Նա զհետ եկեալ Պաւղոսի եւ մեր՝ ա-
ղաղակէր եւ ասէր, Արքս այս ծառայք
Աստուծոյ Բարձրելոյ են, որ պատմեն
18 ձեզ զճանապարհս փրկութեան։ Եւ
զայս առնէր ի բազում աւուրս․ զայ-
րացեալ Պաւղոս՝ դարձաւ եւ ասէ
ցայսն, Պատուիրեմ քեզ յանուն Յի-
սուսի Քրիստոսի ելանել ի դմանէ․
19 եւ ել ի նմին ժամու։ Իբրեւ տեսին
տեարք նորա եթէ հատաւ յոյս շահի
նոցա, առեալ զՊաւղոս եւ զՇիղա՝
ձգեցին ի հրապարակ առ իշխանսն։
20 Եւ ածեալ զնոսա առ զօրագլուխսն՝
ասեն, Արքս այս խռովեցուցանեն զքա-
21 ղաքս մեր․ ինքեանք Հրեայք են, Եւ
պատմեն մեզ օրէնս զոր չէ արժան
մեզ ընդունել եւ ոչ առնել, զի Հռով-
22 մայեցիք եմք։ Եւ կուտեցաւ ամբոխն
ի վերայ նոցա․ եւ զօրագլուխքն պա-
տառեցին զհանդերձս [1]իւրեանց, հրա-
23 մայեցին գան հարկանել․ Եւ բազում
վէրս եդեալ ի վերայ նոցա՝ արկին ի
բանտ, պատուիրեցին բանտապետին
24 զգուշութեամբ պահել զնոսա։ Որոյ
առեալ զայսպիսի պատուէր՝ արկ զնո-
սա ի ներքին բանտն, եւ զոտս նոցա
պնդեաց ի կոճեղ։
25 Եւ ի մէջ գիշերայն Պաւղոս եւ Շի-
ղա կային յաղօթս եւ օրհնէին զԱս-
տուած․ ունկն դնէին նոցա կալանա-
26 ւորքն։ Եւ եղեւ յանկարծակի շար-
ժումն մեծ մինչեւ շարժել հիմանց բան-
տին, եւ բացան անդէն դրունքն ամե-
նայն, եւ ամենեցուն կապանք լուծան։
27 Իբրեւ զարթեաւ բանտապետն եւ ե-
տես բացեալ զդուրս բանտին, ձգեաց
զսուսեր եւ կամէր երթալ զիւրովին,
28 կարծէր փախուցեալ զկապեալսն։ Եւ
կոչեաց ի ձայն մեծ Պաւղոս եւ ասէ,
Մի՛ ինչ գործեր ընդ անձն քո չար,
29 քանզի ամենեքին աստ եմք։ Խնդրեաց
լոյս եւ դիմեաց ի ներքս, եւ դահի
հարեալ անկաւ առաջի Պաւղոսի եւ
30 Շիղայի․ Եւ ածեալ զնոսա արտաքս՝
ասէ, Տեարք, զի՞նչ պարտ է ինձ առ-

[1] Յօյնն, նոցա

31 նել զի ապրեցայց։ Եւ նոքա ասեն,
Հաւատա ի Տէր Յիսուս Քրիստոս, եւ
ապրեսցիս դու եւ [1]ամենայն տուն քո։
32 Եւ խօսեցան նմա զբանն Տեառն՝ եւ
33 ամենեցուն որ էին ի տան նորա։ Եւ
առեալ զնոսա ի նմին ժամու գիշե-
րոյն՝ լուաց ի վիրաց անտի, եւ մկրտե-
ցաւ ինքն եւ իւրքն ամենեքեան ան-
34 դէն վաղվաղակի։ Եւ ածեալ զնոսա
ի տուն իւր՝ եդ առաջի նոցա սեղան.
եւ ուրախ եղեւ ամենայն տամբն հա-
35 ւատացեալ յԱստուած։ Եւ իբրեւ այգ
եղեւ, առաքեցին զօրագլուխքն զնուի-
րակսն եւ ասեն, Արձակեա զարսդ
36 զայդոսիկ։ Եւ պատմեաց բանտապետն
զբանսն՝ Պաւղոսի, եթէ Առաքեցին
զօրագլուխքն զի արձակիցիք. արդ ե-
37 լէք եւ երթայք խաղաղութեամբ։ Իսկ
Պաւղոս ասէ ցնոսա, Գան հարեալ
զմեզ հրապարակաւ, արս անմեղս
Հռովմայեցիս, արկին ի բանտ, եւ արդ
լռելեա՞յն հանեն զմեզ. ոչ այդպէս,
այլ եկեսցեն ինքեանք իսկ հանցեն
38 զմեզ։ Եւ պատմեցին զօրականացն
նուիրակքն զբանսն. զահի հարան իբ-
րեւ լուան թէ Հռովմայեցիք են, եւ
39 եկեալ աղաչեցին զնոսա։ Եւ իբրեւ
հանին, աղաչէին գնալ ի քաղաքէն։
40 Եւ ելեալ ի բանտէն մտին առ Լիդիա,
եւ տեսեալ զեղբարս՝ մխիթարեցին
զնոսա եւ գնացին։

## ԳԼ. ԺԷ

1 ԵԱ. Եւ շրջեալ ընդ Ամփիպօլիս եւ
ընդ Ապողոնիա՝ եկին ի Թեսաղոնիկէ,
2 ուր էր ժողովուրդ Հրէից։ Եւ ըստ
սովորութեանն Պաւղոս եմուտ առ
նոսա, եւ ի շաբաթս երիս խօսեցաւ
3 ընդ նոսա ի գրոց։ Բանայր եւ դնէր
առաջի եթէ պարտ էր Քրիստոսի չար-
չարել եւ յառնել ի մեռելոց, եւ թէ
Նա է Քրիստոսն՝ Յիսուս զոր ես պատ-
4 մեմ ձեզ։ Եւ ոմանք ի նոցանէ հաւա-
նեցան, եւ վիճակեցան Պաւղոսի եւ
Շիղայի, բայց պաշտօնէիցն հեթանո-
սաց էր բազմութիւն յոյժ, եւ ի կա-
5 նանց գլխաւորաց ոչ սակաւք։ Եւ նա-
խանձեցան [2]Հրեայքն, եւ առեալ արս
ոմանս գռեհիկս անօրէնս, ամբոխ ա-
րարեալ խռովէցին զքաղաքն. եւ կու-
տեալ յապարանսն Յասոնի, խնդրէին
6 զնոսա ածել ի հրապարակ։ Եւ իբրեւ
ոչ գտին զնոսա, քարշէին զՅասոն եւ
զոմանս եղբարս առ քաղաքապետսն,
բողոք բարձեալ թէ Որք զաշխարհս
7 խռովեցին՝ սոքա եւ այսր հասին. Զորս
ընկալեալ է Յասոնի. եւ սոքա ամե-
նեքեան հակառակ հրամանացն Կայսեր
գործեն, թագաւոր զոմն ասեն զՅի-
8 սուս։ Եւ խռովեցուցին զժողովուրդսն
եւ զքաղաքապետսն որ լսէին զայս։
9 Եւ առեալ երաշխաւորութիւն առ ի
Յասոնէայ եւ յայլոցն՝ արձակեցին զնո-
10 սա։ Բայց եղբարք վաղվաղակի գիշե-
րայն յուղարկեցին զՊաւղոս եւ զՇիղա
ի Բերիա. որք իբրեւ հասին անդր,
11 ի ժողովուրդն Հրէից գնացին։ Զի սո-
քա էին ազնուագոյնք քան որ ի Թե-
սաղոնիկն էին. որք ընկալան զբանն
ամենայն յօժարութեամբ, հանապազ
քննէին զԳիրս եթէ իցէ՞ այս այսպէս։
12 Եւ բազումք ի նոցանէ հաւատացին
եւ ի Յունաց կանանց զգաստից եւ յա-
13 րանց ոչ սակաւք։ Բայց իբրեւ գիտա-
ցին որ ի Թեսաղոնիկէ Հրեայքն էին
եթէ եւ ի Բերիա պատմեցաւ ի Պաւ-
ղոսէ բանն Աստուծոյ, եկին եւ անդր
շարժել եւ խռովեցուցանել զժողո-
14 վուրդսն։ Յայնժամ զՊաւղոս վաղվա-
ղակի առաքեցին եղբարք գնալ մինչեւ
ի ծովեզր. եւ մնացին Շիղա եւ Տիմո-
15 թէոս անդէն։ Եւ որք տանէին զՊաւ-
ղոս՝ ածին զնա մինչեւ յԱթէնս. եւ
առեալ պատուէր առ Շիղա եւ Տիմո-
թէոս զի վաղվաղակի եկեսցեն առ նա,
եւ գնացին։
16 ԵԲ. Եւ յԱթէնս ի մնալն նոցա Պաւ-
ղոսի՝ զայրանայր հոգի նորա ի նմա,
զի տեսանէր ի կռապաշտութեան զքա-
17 ղաքն։ Եւ խօսէր ի ժողովրդեանն ընդ
Հրեայս եւ ընդ պաշտօնեայսն, եւ ի
հրապարակսն զամենայն օր որոց եւ
18 պատահէին։ Ոմանք յԷպիկուրեանցն
եւ ի Ստոյիկեանց փիլիսոփայից հակա-
ռակէին ընդ նմա. եւ ոմանք ասէին,
Զի՞նչ կամիցի սերմանաքաղս այս խօ-
սել. իսկ այլք՝ թէ Օտարոտի դիւաց
թուի պատմիչ լինելոյ. քանզի զՅի-
սուս եւ զյարութիւնն աւետարանէր։
19 Եւ առեալ զնա ածին յԱրիսպագոսն,

[1] Ի բազումս պակասէ
[2] Ոմանք, անհաւան Հրեայքն

եւ ասէին, Կարասցո՞ւք իմանալ թէ
զի՛նչ է նոր վարդապետութիւնդ որ
20 ի քէն պատմի։ Օտարացուցիչս ինչ
բերես ի լսելիս մեր, կամիմք գիտել
21 թէ զի՛նչ կամիցի այս լինել։ (Զի Ա-
թենացիք ամենեքին եւ եկքն օտարք
ոչ յայլ ինչ պարապէին, բայց ասել
22 ինչ կամ լսել նորագոյնս։) Եկաց Պաւ-
ղոս ի մէջ Արիսպագին եւ ասէ, Արք
Աթենացիք, ըստ ամենայնի իբրեւ
23 պաշտօնասէրս տեսանեմ զձեզ։ Քանզի
շրջեալ եւ տեսեալ զպաշտամունս ձեր,
գտի բագին մի յորում գրեալ էր Ան-
ծանօթի Աստուծոյ. զոր դուքն յան-
ծանօթս պաշտէք՝ ես զնոյն պատմեմ
24 ձեզ։ Աստուած որ արար զաշխարհս
եւ զամենայն որ ի նմա, նա երկնից
եւ երկրի է Տէր. ոչ ի ձեռագործ տա-
25 ճարս բնակէ, Եւ ոչ ի ձեռաց մարդ-
կան պաշտի իբրեւ կարօտ իմիք. նա
տայ ամենայնի կեանս եւ շունչ եւ
26 զամենայն ինչ։ Արար ի միոջէ արենէ
զամենայն ազգս մարդկան՝ բնակել ի
վերայ ամենայն երեսաց երկրի, հաս-
տատեաց կարգեալ ժամանակս եւ սահ-
մանադրութիւնս բնակութեան նոցա՝
27 խնդրել զԱստուած. Զի թերեւս զննի-
ցեն զնա եւ գտանիցեն. նա՝ եւ ոչ
հեռի իսկ է յիւրաքանչիւր ումեքէ ի
28 մէնջ։ Զի նովաւ կեամք եւ շարժիմք
եւ եմք, որպէս եւ ոմանք ի ձերոց
ճարտարաց ասացին, Թէ նորա եւ ազգ
29 իսկ եմք։ Եւ արդ՝ որովհետեւ ազգ
եմք Աստուծոյ, ոչ պարտիմք համա-
րել ոսկւոյ կամ արծաթոյ կամ քարի
որ ի ճարտարութենէ եւ ի մտաց մար-
դոյ քանդակեալ իցէ, զԱստուածա-
30 կանն լինել նմանող։ Բայց զժամա-
նակս անգիտութեանն անտես արար-
եալ Աստուծոյ, արդ զայս պատուիրէ
[1]մարդկան՝ ամենայն ումեք" ապաշ-
31 խարել։ Քանզի հաստատեաց օր յո-
րում պարտ է դատել զաշխարհս ար-
դարութեամբ ի ձեռն առնն որով սահ-
մանեաց տալ հաւատս ամենեցուն՝ յա-
րուցեալ զնա ի մեռելոց։
32 Իբրեւ լուան զյարութիւն մեռելոց,
ոմանք ծաղր առնէին, կէսքն ասէին,
Լուիցուք ի քէն վասն այդորիկ միւս
33 անգամ։ Եւ ապա Պաւղոս ել գնաց
34 ի միջոյ նոցա։ Եւ ոմանք արք ան-
կեալք ի նա՝ հաւատացին, ընդ որս էր
եւ Դիոնեսիոս Արիսպագացի եւ կին մի
անուն Դամարիս եւ այլք ընդ նոսա։

ԳԼ. ԺԸ

1 ԵԳ. Յետ այսորիկ մեկնեալ Պաւղոսի
յԱթենացւոց անտի՝ եկն ի Կորնթոս.
2 Եւ եգիտ զոմն Հրեայ, անուն Ակիւ-
ղաս, յազգէ Պոնտացի, այն ինչ եկեալ
յԻտալիայ, եւ զՊրիսկիղա կին նորա,
վասն հրամանին Կղաւդեայ՝ որոշել
զամենայն Հրեայս ի Հռովմայ, եւ յա-
3 րեցաւ ի նոսա։ Եւ վասն զի համա-
րուեստ էր, եղեւ առ նոսա եւ գործէր,
քանզի էին խորանակարք արուեստիւ։
4 Եւ խօսէր ի ժողովրդեանն ըստ ամե-
նայն շաբաթուց, եւ հաւանեցուցանէր
5 զՀրեայս եւ զհեթանոսս։ Իբրեւ իջին
ի Մակեդոնիայ Շիղա եւ Տիմոթէոս,
ստիպէր հոգւովն Պաւղոս դնել վկայու-
թիւն Հրէիցն թէ Յիսուս է Քրիստոսն։
6 Եւ յընդդէմ դառնալ նոցա եւ ի հայհո-
յել, թօթափեաց զձորձս եւ ասէ ցնո-
սա, Արիւն ձեր ի գլուխ ձեր, քաւեալ
եմ ես, յայսմ հետէ ի հեթանոսս եր-
7 թամ։ Եւ գնացեալ անտի՝ եմուտ ի
տուն ուրումն, որոյ անուն էր [2]Տի-
տոս Յուստոս, պաշտօնեայ Աստուծոյ.
որոյ ապարանքն էին մերձ ի ժողո-
8 վետղն։ Կրիսպոս ժողովրդապետ հա-
ւատաց ի Տէր ամենայն տամբ իւրով.
եւ բազմաց ի Կորնթացւոյն լուեալ՝
9 հաւատացին եւ մկրտեցան։ Եւ ասէ
Տէր ի գիշերի տեսլեամբ ցՊաւղոս,
Մի՛ երկնչիր, այլ խօսեաց եւ մի՛ լռեր,
10 Քանզի ես ընդ քեզ եմ, եւ ոչ ոք ընդ-
դէմ դարձցի քո՝ ի չարչարել զքեզ.
քանզի ժողովուրդ է իմ բազում ի քա-
11 ղաքիս յայսմիկ։ Եւ նստաւ անդ տարի
մի եւ ամիսս վեց՝ ուսուցանել նոցա
զբանն Աստուծոյ։
12 ԵԴ. Առ Գաղիոնաւ փոխանակաւ
բդեշխին Աքայեցւոց յարեան միաբան
Հրեայքն ի վերայ Պաւղոսի, եւ ածին
13 զնա յատեան. Եւ ասէին եթէ Արտա-
քոյ օրինաց պատրէ սա զմարդիկ՝ պաշ-
14 տել զԱստուած։ Եւ իբրեւ մերձ էր
Պաւղոս բանալ զբերան իւր, ասէ

[1]Յոյնն, ամենայն մարդկան ամենայն ուրեք

[2]Յոմանս [illegible]

Գաղիոնն ցՀրեայսն, Եթէ էր ինչ ա-
նիրաւութիւն կամ խարդախութիւն
չարեաց, ով Հրեայք, ի դէպ էր ինձ
15 անսալ ձեզ։ Ապա եթէ խնդիրք ինչ
են վասն բանի եւ անուանց եւ օրի-
նաց ձերոց՝ տեսէք ձեզէն, քանզի դա-
տաւոր այդպիսի իրաց չկամիմ լինել։
16 Եւ մերժեաց զնոսա յատենէ անտի։
17 Եւ առեալ ամենեցուն Յունացն զՍոս-
թենէս ժողովրդապետն՝ հարկանէին
առաջի ատենին, եւ ոչինչ զայնմանէ
Գաղիոնի փոյթ լինէր։
18 Բայց Պաւղոսի տակաւին մնացեալ
աւուրս բազումս, յեղբարց հրաժար-
եալ՝ նաւէր յԱսորիս, եւ ընդ նմա
Պրիսկիղա եւ Ակիւղաս, փոքրել զգլ-
ուխ ի Կենքրա, քանզի ուխտադիր
19 էր։ Եւ հասեալ յԵփեսոս՝ զնոսա եթող
անդ, եւ ինքն մտեալ ի ժողովուրդն
20 խօսէր ընդ Հրեայսն։ Եւ աղաչեցին
զնա բազում ժամանակս լինել անդ,
21 եւ ոչ առ յանձն. Այլ հրաժարեաց ի
նոցանէ եւ ասէ, [1]Դարձեալ շրջեցայց
22 Աստուծոյ կամօքն առ ձեզ. Անբար-
ձաւ յԵփեսոսէ, եւ իջեալ ի Կեսարիա՝
ել եւ ետ ողջոյն եկեղեցւոյն, էջ յԱն-
23 տիոք։ Եւ եկեալ անդ ժամանակ ինչ՝
ել շրջել կարգաւ ընդ Գաղատացւոց
աշխարհն եւ ընդ Փռիւգիա, հաստա-
տել զամենայն աշակերտեալսն։
24 Հրեայ ոմն [2]Ապեղէս անուն Աղեք-
սանդրացի յազգէ, այր ճարտարբան,
եկն եհաս յԵփեսոս, զօրաւոր էր
25 գրովք։ Սա էր տեղեկացեալ ճանա-
պարհին Տեառն, եւ եռայր հոգւով,
խօսէր եւ ուսուցանէր ճշմարտու-
թեամբ վասն [3]Յիսուսի. գիտէր մի-
26 այն զմկրտութիւնն Յովհաննու։ Սա
սկսաւ համարձակել ի ժողովրդեանն.
եւ լուեալ ի նմանէ Ակիւղայ եւ Պրիս-
կիղայ՝ առին զնա առ իւրեանս, եւ
ճշմարտագոյնս պատմեցին նմա զճա-
27 նապարհն Աստուծոյ։ Իբրեւ կամեցաւ
նա գնալ յԱքայիա, [4]յօժարեալ եղ-
բարց" գրեցին առ աշակերտսն ընդու-
նել զնա. որ իբրեւ եհաս անդր, բա-
զում նպաստ լինէր հաւատացելոցն
28 ի ձեռն շնորհացն։ Քանզի պնդագոյն
զՀրեայսն յանդիմանէր հրապարակա-
ւ ցուցանել գրովք՝ եթէ Քրիստոսն է
Յիսուս։

## Գլ․ ԺԹ

1 ԵԵ․ Եւ եղեւ մինչդեռ Ապողոսն ի
Կորնթոս էր, Պաւղոսի շրջեալ զվերին
կողմամբքն եւ իջանել յԵփեսոս, եւ
2 գտանել զոմանս աշակերտս, Ասէ
ցնոսա, եթէ Հոգի Սուրբ ընկալարո՞ւք
ի հաւատալն. Նոքա ասեն ցնա, Այլ
եւ ոչ թէ Հոգի Սուրբ գուցէ՝ լուեալ
3 է մեր։ Եւ ասէ, Իսկ յի՞նչ մկրտե-
ցարուք. Նոքա ասեն, Ի Յովհաննու
4 մկրտութիւնն։ Եւ ասէ Պաւղոս, Յով-
հաննէս մկրտեաց մկրտութիւն ապաշ-
խարութեան [5]ամենայն ժողովրդեանն
եւ ասէր" զի որ գալոցն է յետ նորա՝
ի նա հաւատասցեն, այսինքն է ի Յի-
5 սուս Քրիստոս։ Եւ իբրեւ լուան,
մկրտեցան յանուն Տեառն Յիսուսի։
6 Եւ ի դնել ի վերայ նոցա Պաւղոսի
զձեռն՝ եկն Հոգին Սուրբ ի վերայ նո-
ցա, խօսէին լեզուս եւ մարգարէա-
7 նային։ Եւ էին ամենեքեան արք իբ-
8 րեւ երկոտասան։ Եւ մտեալ ի ժողո-
վուրդն՝ համարձակէր ամիսս երիս,
խօսէր եւ հաւանեցուցանէր վասն ար-
9 քայութեանն Աստուծոյ։ Իբրեւ ո-
մանք խստանային եւ ընդդէմ դառ-
նային բամբասել զճանապարհն առաջի
բազմութեանն, մեկնեալ ի նոցանէ ո-
րոշեաց զաշակերտսն, հանապազօր խօ-
սէր ի դպրանոցին Տիւրաննեայ ուրումն։
10 Եւ այս եղեւ զերկեամ մի, մինչեւ
ամենայն բնակչացն Ասիացւոց լսել
զբանն Տեառն, Հրէից եւ հեթանոսաց։
11 Եւ զօրութիւնս ոչ սակաւս առնէր Աս-
12 տուած ի ձեռն Պաւղոսի. Մինչեւ ի
հիւանդս տանել [6]ի քրտանէ նորա
թաշկինակս կամ վարշամակս, եւ մեր-
ժել ի նոցանէ ախտիցն, եւ այսոց չա-
13 րաց ելանել։ Յանդգնեցան ոմանք եւ
ի շրջող Հրէիցն, որ երդմնեցուցիչքն
էին, անուանել ի վերայ այնոցիկ որք
ունէին այսս չարս՝ զանուն Տեառն
Յիսուսի, եւ ասէին, Երդմնեցուցանեմ

[1]Ոմանք, Պարտ է ինձ ապաքէն զառաջիկայ տօնն կատարել յԵրուսաղէմ, բայց դարձեալ
[2]Բազումք, Ապողոս
[3]Ոմանք, Տեառն
[4]Յոյնն, քաջալերեցին եղբարքն
[5]Յոյնն, և ասէր ժողովրդեանն
[6]Յոյնն, ի մարմնոյ

զձեզ ի Յիսուս զոր Պաւղոսն քարոզէ։
14 էին ուրումն Սկեւեայ Հրէի քահա-
նայապետի եւթն որդի, որ զայս առ-
15 նէին։ Պատասխանի ետ այսն չար եւ
ասէ ցնոսա, ԶՅիսուս գիտեմ եւ զՊաւ-
16 ղոս ճանաչեմ, բայց դուք ո՞վ էք։ Եւ
վազեաց այրն յորում էր այսն չար՝
ըմբռնեալ [1]զերկոսեան յաղթահարեաց
զնոսա, մինչեւ մերկս եւ վիրաւորս
17 փախչել ի տանէ անտի։ Եւ այս յայտնի
եղեւ ամենայն Հրէից եւ հեթանոսաց
որ բնակեալ էին յԵփեսոս. եւ անկաւ
երկեւղ յամենեսեան ի նոսա, եւ մե-
18 ծանայր անուն Տեառն Յիսուսի։ Եւ
բազումք ի հաւատացելոցն գային, եւ
խոստովան լինէին եւ պատմէին զգործս
19 իւրեանց։ Եւ բազումք ի կախարդա-
սարացն բերէին զգիրսն, այրէին առա-
ջի ամենեցուն. եւ համարեցան զգինս
նոցա եւ գտանէին արծաթոյ բեւրս
հինգ։
20 ԵԶ. Եւ այսպէս բանն Աստուծոյ ա-
ճէր եւ զօրանայր։
21 Եւ իբրեւ կատարեցաւ այս, եդ Պաւ-
ղոս ի մտի շրջել ընդ Մակեդոնիա եւ
ընդ Աքայիա եւ գալ յԵրուսաղէմ. ա-
սէր եթէ Յետ երթալոյն իմ անդր՝
22 պարտ է ինձ եւ զՀռովմ տեսանել։ Ա-
ռաքեաց ի Մակեդոնիա երկուս ի պաշ-
տօնէիցն իւրոց, զՏիմոթէոս եւ զԵ-
րաստոս, եւ ինքն մնաց ժամանակս
ինչ յԱսիա։
23 Եւ եղեւ ի ժամանակին յայնմիկ խռո-
վութիւն ոչ սակաւ վասն ճանապար-
24 հին։ Իսկ Դեմետրիոս ոմն անուն ար-
ծաթագործ գործէր մեհեանս արծաթիս
Արտեմիս դից, եւ տայր ճարտարացն
25 լինել ոչ սակաւ շահ. Որ ժողովեաց
խկ եւ զձեռագէտս արուեստին եւ
ասէ, Արք, դուք ձեզէն իսկ գիտէք,
26 զի յայսմ գործոյ է շահ մեզ։ Եւ տե-
սանէք եւ լսէք եթէ ոչ միայն զԵփե-
սացւոց, այլ գրեթէ զամենայն իսկ Ա-
սիացւոց, Պաւղոս այս հաւանեցու-
ցեալ շրջեաց բազում ժողովս ասել թէ
27 Ոչ են աստուածք ձեռագործք։ Եւ ոչ
միայն այս ճգնէ զմեր կողմնս գալ ի
յանգիտանութիւն, այլ եւ զմեծին աս-
տուածոյ Արտեմեայ զմեհեանն յոչինչ
համարել. նա եւ քակելոց եւս իցէ
մեծութիւն նորա, զոր ամենայն Ասիա
28 եւ տիեզերք պաշտեն։ Եւ զայս իբրեւ
լուան, լի եղեն բարկութեամբ. աղա-
ղակէին եւ ասէին, Մեծ է Արտեմիս
29 Եփեսացւոց։ Եւ լցաւ քաղաքն խռո-
վութեամբ, դիմեցին առ հասարակ ի
թէատրոնն, յափշտակեցին զԳայիոս
եւ զԱրիստարքոս Մակեդոնացի, զու-
30 ղեկիցսն Պաւղոսի։ Բայց Պաւղոս իր-
րեւ կամեցաւ մտանել յամբոխն, ոչ
31 թողին զնա աշակերտքն։ Ոմանք եւ
յԱսիապետացն որ էին նորա բարե-
կամք՝ յղէին առ նա եւ աղաչէին, մի՛
32 տալ զանձն ի թէատրոնն։ Այլք այլ
ինչ աղաղակէին, զի էր ժողովն նոցա
խռովեալ. եւ բազումք ի նոցանէ ոչ
գիտէին թէ վասն որոյ ժողովեալ իցեն։
33 Եւ յամբոխէն բազմութենէ յառաջ կա-
լան զԱղեքսանդրոս. եւ իբրեւ ածին
զնա յառաջ Հրեայքն, Աղեքսանդրոս
շարժեաց զձեռն եւ կամէր պատաս-
34 խանի տալ ամբոխին։ Իբրեւ գիտա-
ցին թէ այրն Հրեայ է, միաբարբառ
եղեալ յամենեցունց՝ իբրեւ ժամս եր-
կուս աղաղակել թէ Մեծ է Արտեմիս
35 Եփեսացւոց։ Լռեցոյց դպրապետն զամ-
բոխն՝ եւ ասէ, Արք Եփեսացիք, իսկ
ո՞վ է ի մարդկանէ որ ոչ գիտէ զԵփե-
սացւոց քաղաքս մեհենազարդ մեծին
36 Արտեմեայ դիցն եւ Դիոպետեայ։ Եւ
զի այդ այդպէս է անշուշտ, ձեզ պարտ
է հանդարտել եւ մի՛ ինչ յանդգնու-
37 թեամբ գործել։ Ածէք զարսդ զայդո-
սիկ այսր, ոչ մեհենակապուտս եւ ոչ
38 հայհոյիչս աստուածոյն մերոյ։ Զի եթէ
Դեմետրիոս եւ որք ընդ նմա ճարտարք
ունիցին ինչ ընդ ումեք բանս, յատ-
եանն երթիցեն, եւ դատաւորք գոն,
39 եւ ամբաստան լիցին զմիմեանց։ Ապա
եթէ վասն այլ իրիք խնդիր իցէ, յօ-
40 րինաւոր ժողովն վճարեսցի։ Քանզի
եւ մեզ վիշտ վտանգի է ընդ կռուոյս
այսր աւուր՝ առանց իրիք յանցանաց
լինելոյ, զորմէ ոչ կարասցուք պա-
տասխանի տալ վասն ժողովոյս այսո-
րիկ։ Եւ զայս ասացեալ՝ արձակեաց
զժողովսն։

ԳԼ. Ի

1 ԵԷ. Եւ յետ դադարելոյ ամբոխին՝

[1] Ոմանք, զնոսա

կոչեաց Պաւղոս զաշակերտսն, [1]եւ
մխիթարեաց." ողջոյն ետ եւ ել գնաց
2 ի Մակեդոնիա։ Եւ շրջեալ ընդ կող-
մանսն ընդ այնոսիկ, եւ մխիթարեալ
զնոսա բանիւք բազմօք՝ եկն յԵլլադա։
3 Իբրեւ արար անդ ամիսս երիս, եղեւ
նմա դաւ ի Հրէիցն, մինչդեռ կամէր
ելանել յԱսորիս. խորհուրդ կալաւ
4 դառնալ ընդ Մակեդոնիա։ Եւ երթայր
ընդ նմա մինչեւ յԱսիա Սոսիպատրոս
[1]Պիւռեայ Բերիացի, եւ ի Թեսաղոնի-
կեցւոց Արիստարքոս եւ Սեկունդոս,
եւ Գայիոս Դերբացի եւ Տիմոթէոս,
եւ Ասիացիք՝ Տիւքիկոս եւ Տրոփիմոս։
5 Սոքա յառաջ երթեալ մնային մեզ ի
6 Տրովադա։ Եւ մեք նաւեցաք յետ ա-
ւուրցն բաղարջակերաց ի Փիլիպպեայ,
եւ եկաք առ նոսա ի Տրովադա՝ մին-
չեւ յաւուրս հինգ. անդ դադարեցաք
աւուրս եւթն։

7 Եւ [2]յաւուրն շաբաթուց" մինչդեռ
ժողովեալ էաք բեկանել զհացն, Պաւ-
ղոս խօսէր ընդ նոսա զի գնալոց էր
ի վաղիւ անդր. եւ երկայնեաց զբանն
8 մինչեւ ի մէջ գիշերոյն։ Էին լապտերք
բազումք ի վերնատանն ուր էաք ժո-
9 ղովեալ։ Եւ նստէր ոմն երիտասարդ
անուն Եւտիքոս ի վերայ պատուհա-
նին, նիրհէր ի քուն թանձրութեան.
ի խօսելն Պաւղոսի յաճախ, ընկղմեալ
ի քնոյ անտի՝ անկաւ յերրորդ դստի-
կոնէն ի վայր, եւ բարձաւ մեռեալ։
10 Եւ իջեալ Պաւղոսի անկանէր զնովաւ,
առնոյր զնա ընդ գիրկս եւ ասէր, Մի՛
խռովիք, քանզի հոգի սորա ի սմին է։
11 Եւ ել եբեկ զհացն եւ ճաշակեաց. եւ
բազում եւս խօսեցաւ մինչեւ յառա-
12 ւօտն, եւ ապա ել գնաց։ Եւ ածին
զպատանին կենդանի, եւ մխիթարե-
13 ցան ոչ սակաւ։ Եւ մեք մտեալ ի նաւն՝
ամբարձաք յԱսոն, անտի ակն ունէ-
աք միւսանգամ առնուլ զՊաւղոս, զի
այնպէս պատուիրեալ էր, մինչ ինքն
14 [3]զցամաքաւն երթալոց էր։ Եւ իբրեւ
դիպեցաւ մեզ ի յԱսոն, առեալ զնա
15 եկաք ի Միտիլինէ։ Եւ անտի նաւեալ՝
ի վաղիւ անդր հասաք հանդէպ Քիայ,
եւ ի մեւս օրն հասաք ի Սամոս, եւ
16 [4]ի վաղիւ անդր եկաք ի Միլետոն։ Զի
ի մտի եդեալ էր Պաւղոսի նաւել առ
Եփեսաւ, որպէս զի մի՛ լիցի նմա ժա-
մանակ ինչ յամել յԱսիա. քանզի փու-
թայր, եթէ հնար ինչ իցէ նմա, զօրն
Պենտակոստէից երթալ յԵրուսաղէմ։
17 ՁԱ. Եւ ի Միլետեայ յղեալ յԵփեսոս՝
18 կոչեաց զերիցունս եկեղեցւոյն։ Եւ
իբրեւ եկին առ նա, ասէ ցնոսա, Դուք
ձեզէն գիտէք յօրէ յառաջնմէ յորմէ
եկի յԱսիա, ո՛րպէս ընդ ձեզ զամենայն
19 ժամանակսն եղէ. Ծառայել Տեառն
ամենայն խոնարհութեամբ, եւ բա-
զում արտասուօք եւ փորձութեամբք
որ դիպեցան ինձ ի նենգութեանց Հրէ-
20 ից։ Ո՛րպէս ոչինչ զանգիտեցի յօգտա-
կարացն չպատմել ձեզ եւ ուսուցանել
21 զձեզ հրապարակաւ եւ ատնին. Տալ
վկայութիւն Հրէից եւ հեթանոսաց
զապաշխարութեանն որ առ Աստուած,
եւ զհաւատոցն որ ի Տէր մեր Յիսուս
22 Քրիստոս։ Եւ արդ ահաւասիկ ես կապ-
եալ հոգւով երթամ յԵրուսաղէմ, եւ որ
ինչ անդ ընդ իս անցանելոց իցէ՝ չգի-
23 տեմ։ Բայց զի Հոգին Սուրբ ըստ քա-
ղաքաց քաղաքաց վկայէ ինձ, եւ ասէ
եթէ կապանք եւ նեղութիւնք մնան
24 քեզ։ Այլ [5]եւ ոչ" իւիք համարիմ զանձն
իմ պատուական՝ որպէս զկատարել զըն-
թացս իմ ուրախութեամբ, եւ զպաշ-
տօնն զոր առի ի Տեառնէ Յիսուսէ՝
վկայ լինել աւետարանի շնորհացն Աս-
25 տուծոյ։ Եւ արդ ահաւասիկ գիտեմ
ես, թէ ոչ եւս տեսանելոց էք զերեսս
իմ դուք ամենեքեան յորս շրջեցայ
քարոզել զարքայութիւնն [1]Աստուծոյ։
26 Վասն որոյ վկայութիւն զնեմ ձեզ յա-
ւուր յայսմիկ զի սուրբ եմ յարենէ ա-
27 մենեցուն։ Քանզի ոչ խորշեցայ ի
չպատմելոյ ձեզ զամենայն կամս Աս-
28 տուծոյ։ Զգոյշ կացէք անձանց եւ ա-
մենայն հօտիդ, յորում եդ զձեզ Հոգին
Սուրբ տեսուչ՝ հովուել զժողովուրդ
[6]Տեառն, զոր [7]ապրեցոյց արեամբ իւ-
29 րով։ Քանզի գիտեմ ես եթէ յետ իմոյ
մեկնելոյ գայցեն գայլք յափշտակողք
30 ի ձեզ, որ ոչ խնայեսցեն հօտին։ Եւ
ի ձէնջ յարիցեն արք որք խօսիցին

[1]Յոմանս պակասէ
[2]Յոյնն, ի միաշաբաթւոջն
[3]կամ, հետի

[4]Ոմանք, մնացեալ ի Տրոգիլիոն՝ ի վաղիւ
[5]Ոմանք, ոչ ինչ փոյթ է ինձ, և ոչ
[6]Ոմանք, Աստուծոյ
[7]Յոյնն, ստացաւ

*Թեւրս՝ ձգել զաշակերտսն զկնի իւր-*
31 *եանց ։ Վասն այսորիկ արթուն կացէք*
*եւ յիշեցէք զի [1]զերեամ մի զցայգ եւ*
*զցերեկ ոչ դադարեցի արտասուօք*
32 *խրատել զմի մի իւրաքանչիւր ։ Եւ*
*արդ յանձն առնեմ զձեզ Աստուծոյ եւ*
*բանի շնորհաց նորա, որ կարող է*
*շինել եւ տալ ձեզ ժառանգութիւն ընդ*
33 *սուրբսն ամենեսեան ։ Արծաթոյ կամ*
*ոսկւոյ կամ հանդերձից ոչ ուրուք ի*
34 *ձէնջ ցանկացայ ։ Դուք ինքնին գիտէք*
*զի զպէտսն իմ եւ որոց ընդ իսն էին՝*
35 *պաշտէին ձեռքս այս ։ Եւ զամենայն*
*ինչ ցուցի ձեզ, զի այսպէս պարտ է*
*վաստակել եւ դարմանել զհիւանդս,*
*եւ յիշել զբանն Տեառն Յիսուսի, զոր*
*ինքն իսկ ասաց, Երանելի է մանաւանդ*
36 *տալն քան առնուլն ։ Եւ զայս իբրեւ*
*ասաց, եդեալ ծունր ամենեքումբք՝*
37 *եկաց յաղօթս ։ Բազում լալիւն եղեւ*
*ամենեցուն, եւ անկեալ զպարանոցաւն*
38 *Պաւղոսի՝ համբուրէին զնա ։ Մորմո-*
*քէին մանաւանդ ի վերայ բանին զոր*
*ասէր թէ ոչ եւս տեսանելոց են զե-*
*րեսս նորա . եւ յուղարկեցին զնա ի*
*նաւ անդր ։*

## ԳԼ. ԻԱ

1 ՁԲ. **Ե**ւ *իբրեւ եղեւ ելանել մեզ եւ*
*մեկնել ի նոցանէ, հանդէպ գնացեալ*
*եկաք ի Կով, եւ ի վաղիւ անդր ի Հռո-*
2 *դոն եւ անտի ի Պատարա ։ Եւ գտեալ*
*նաւ մի զի երթայր ի Փիւնիկէ, ելեալ*
3 *ի նա գնացաք ։ Եւ յայտ եղեալ Կիպ-*
*րեայ՝ թողաք զնա ի ձախակողմն, նա-*
*ւեցաք յԱսորիս եւ իջաք ի Տիւրոս,*
*քանզի անդ էր նաւուն թափելոց զբե-*
4 *ռինսն ։ Եւ գտեալ զաշակերտսն՝ կա-*
*ցաք անդ աւուրս եւթն . որք ասէին*
*ցՊաւղոս ի ձեռն Հոգւոյն՝ մի՛ ելանել*
5 *յԵրուսաղէմ ։ Եւ իբրեւ եղեւ մեզ կա-*
*տարել զաւուրսն՝ ելեալ գնացաք, յու-*
*ղարկեալ զմեզ ամենեցուն հանդերձ*
*կանամբք եւ որդւովք մինչեւ արտա-*
*քոյ քաղաքին . եւ եդեալ ծունր առ*
6 *ծովեզերբն՝ կացաք յաղօթս ։ Եւ հրա-*
*ժարեցաք ի միմեանց եւ ելաք ի նաւն,*
*եւ նոքա դարձան յիւրեանց տեղիս ։*
7 *Եւ մեր զնաւն առեալ ի Տիւրոսէ՝*
*հասաք ի Պտղոմայիդա, եւ ողջոյն*
*տուեալ եղբարց՝ եղաք օր մի առ նո-*
8 *սա ։ Եւ ի վաղիւ անդր ելեալ անտի՝*
*եկաք ի Կեսարիա, եւ մտեալ յապա-*
*րանսն Փիլիպպոսի աւետարանչի որ*
*էր յեւթանց անտի, ագաք առ նմա ։*
9 *Նորա էին դստերք չորք կոյսք՝ մար-*
10 *գարէք ։ Եւ ի լինելն մեր անդ աւուրս*
*բազումս, էջ ոմն ի Հրէաստանէ մար-*
11 *գարէ՝ անուն Ագաբոս . Եւ եկեալ առ*
*մեզ, առեալ զգօտին Պաւղոսի՝ կապ-*
*եաց զոտս եւ զձեռս իւր, եւ ասէ,*
*Այսպէս ասէ Հոգին Սուրբ, Զայրն*
*որոյ գօտիս այս է՝ այսպէս կապեսցեն*
*յԵրուսաղէմ Հրեայք եւ մատնեսցեն*
12 *ի ձեռս հեթանոսաց ։ Եւ իբրեւ լուաք*
*զայն, աղաչէաք մեք եւ որ ի տեղւոջն*
13 *էին՝ չելանել նմա յԵրուսաղէմ ։ Յայն-*
*ժամ պատասխանի ետ Պաւղոս, Զի՞նչ*
*գործէք զի լայքդ եւ ճմլեցուցանէք*
*զսիրտ իմ . քանզի ես ոչ միայն կա-*
*պելոյ, այլ եւ մեռանելոյ յԵրուսաղէմ*
*պատրաստ եմ վասն անուանն Տեառն*
14 *Յիսուսի [2]Քրիստոսի ։ Եւ ի չանսալն*
*նորա՝ լռեցաք, ասեմք, Տեառն կամք*
*լիցին ։*
15 ՁԳ. *Եւ յետ աւուրցն այնոցիկ հան-*
16 *դերձեալ ելանէաք յԵրուսաղէմ ։ Եկին*
*ընդ մեզ եւ յաշակերտաց անտի Կեսա-*
*րացւոց, եւ տանէին [3]զմեզ առ որում*
*վանս ունելոց էաք՝ Մնասոնի ումեմն*
17 *Կիպրացւոյ առաջին աշակերտի ։ Եւ*
*ի մտանելն մեր յԵրուսաղէմ, խնդու-*
18 *թեամբ ընկալան զմեզ եղբարք ։ Ի վա-*
*ղիւ անդր եմուտ Պաւղոս ընդ մեզ*
*առ Յակովբոս, եւ եկին ամենայն ե-*
19 *րիցունքն ։ Եւ ողջոյն տուեալ նոցա՝*
*պատմէր մի ըստ միոջէ զոր արար Աս-*
*տուած ի հեթանոսս ի ձեռն պաշտա-*
20 *մանն նորա ։ Եւ նոցա լուեալ փառա-*
*ւոր առնէին զԱստուած, եւ ասեն ցնա,*
*Տեսանե՞ս, եղբայր, քանի բեւրք են*
*հաւատացելոցն Հրէից, եւ ամենեքեան*
21 *նախանձաւոր օրինացն են ։ Բայց ի-*
*րազեկ եղեն վասն քո թէ ապստամ-*
*բութիւն ուսուցանես ի Մովսիսէ որոց*
*ի հեթանոսս ամենայն Հրեայք են .*
*ասես, մի՛ թլփատել նոցա զորդիս,*
22 *եւ մի՛ ըստ կրօնիցն գնալ ։ Արդ զի՞նչ*

---

[1] Ոմանք ի Յոյն օրինակաց, որպէս և ի մերոց՝ զերկեամ

[2] Յոմանս պակասի

[3] Ի բազումս պակասի

լինիցի. [1]ապաքէն լսեն՝ եթէ եկեալ
23 ես: Արդ զայս արա զոր ասեմք քեզ.
են ի մեզ արք չորք ուխտադիրք յան-
24 ձինս իւրեանց. Զնոսա առեալ՝ սրբեա-
ցիս ընդ նոսա. եւ ծախեա ինչ ի նոսա
զի գերծցեն զգլուխս. եւ գիտասցեն
ամենեքին թէ զորոց լրագեկն եղեն
զքէն՝ ոչինչ է, այլ միաբանիս եւ դու
25 պահել զօրէնսն: Բայց վասն հաւատա-
ցելոցն հեթանոսաց՝ մեք առաքեցաք
որպէս ընտրեցաք, մի՛ ինչ այնպիսի
պահել նոցա. բայց միայն զգուշանալ
նոցա ի կռոց զոհելոյ եւ յարենէ եւ ի
26 հեղձուցելոյ եւ ի պոռնկութենէ: Յայն-
ժամ Պաւղոսի առեալ զարսն՝ ի վաղիւ-
անդր ընդ նոսա սրբեալ եմուտ ի տա-
ճարն. յայտ առնել զկատարումն ա-
ւուրցն սրբութեան, մինչեւ մատեաւ
ի վերայ իւրաքանչիւր ուրուք ի նո-
ցանէ պատարագ:
27 ԶԴ. Եւ իբրեւ մերձ էին եւթն ա-
ւուրքն ի կատարել, տեսեալ զնա ի
տաճարին Ասիացւոց Հրէիցն՝ գեղուին
զնովաւ զամենայն զամբոխն. եւ ար-
28 կեալ ի նա ձեռս՝ աղաղակէին, Արք
Իսրայելացիք, օգնեցէք. այս այր է որ
հակառակ ժողովրդեանն եւ օրինացն
եւ տեղւոյս այսորիկ ամենեցուն ա-
մենայն ուրեք ուսուցանէ, մինչեւ հե-
թանոսս եւս եմոյծ ի տաճարն եւ պղ-
29 ծեաց զսուրբ տեղին: (Քանզի էր յա-
ռաջագոյն տեսեալ զՏրոփիմոս զԵփե-
սացի ի քաղաքին ընդ նմա. զոր կար-
ծէին եթէ ի տաճար անդր եմոյծ Պաւ-
30 ղոս:) Շարժեցաւ քաղաքն ամենայն,
եւ կուտեցաւ ժողովուրդն, եւ առեալ
զՊաւղոս՝ ձգէին արտաքոյ տաճարին.
եւ վաղվաղակի փակեցան դրունքն:
31 Եւ խնդրէին զնա սպանանել. եհաս
զրոյց ի հազարապետ գնդին, եթէ խը-
32 ռովեալ է ամենայն Երուսաղէմ: Որոյ
անդէն առեալ զօրականս եւ հարիւ-
րապետս՝ դիմեաց ի վերայ նոցա. եւ
նոցա տեսեալ զհազարապետն եւ զզօ-
րականսն, դադարեցին ի հարկանելոյ
33 զՊաւղոս: Յայնժամ մատուցեալ հա-
զարապետն կալաւ զնա, եւ հրամայ-
եաց կապել կրկին շղթայիւք, եւ հար-
ցանէր թէ ո՞ իցէ, եւ զի՞նչ իցէ ա-
34 րարեալ: Այլք այլ իմն աղաղակէին
զնմանէ յամբոխին. իբրեւ ոչ կարաց
գիտել զստոյգն վասն ամբոխին, հրա-
35 մայեաց ածել զնա ի բանակն: Եւ իբ-
րեւ եհաս յաստիճանսն, դէպ եղեւ
բառնալ բերել զնա ի զօրականացն
36 վասն բռնութեան ամբոխին: Քանզի
զհետ երթայր բազմութիւն ժողովր-
37 դեանն եւ ասէին, Բարձ զդա: Մինչ-
դեռ մտանելոց էր Պաւղոս ի բանակն,
ասէ ցհազարապետն, Եթէ արժա՞ն իցէ
ինձ խօսել ընդ քեզ. եւ նա ասէ,
38 Յունարէն գիտե՞ս. Մի՛ արդեւք դու
իցես Եգիպտացին, որ յառաջ քան
զայս աւուրս ապստամբեցուցեր եւ
հաներ յանապատ չորս հազարս արս
39 սիկարեանս: Եւ ասէ Պաւղոս, Ես եմ
այր Հրեայ ի Տարսոնէ Կիլիկեցւոց, ոչ
աննշան քաղաքի քաղաքացի. աղաչեմ
զքեզ հրամայեա ինձ խօսել առ ժողո-
վուրդդ:
40 Եւ ի հրամայելն նորա,՝ Պաւղոս կա-
ցեալ ի վերայ աստիճանացն՝ շարժեաց
զձեռն ժողովրդեանն. իբրեւ բազում
լռութիւն լինէր, սկսաւ բարբառել
Հեբրայեցւոց բարբառով եւ ասէ,

## Գլ. ԻԲ

1 Արք եղբարք եւ հարք, լուարուք ինձ
այժմ առ ձեզ պատասխանատուու-
2 թեանս: (Իբրեւ լուան եթէ Հեբրա-
յեցւոց լեզուաւն բարբառեցաւ նոցա՝
առաւել եւս դադարեցին ի լռութիւն.
3 Եւ նա ասէ,) Ես եմ այր Հրեայ ծնեալ
ի Տարսոն Կիլիկեցւոց՝ սնեալ ի քաղա-
քիս յայսմիկ առ ոտս Գամաղիելի,
խրատեալ ըստ ճշմարտութեան հայ-
րենի օրինացն, նախանձայոյզ էի Աս-
տուծոյ՝ որպէս ամենեքեան դուք այ-
4 օր: Որ զայն ճանապարհ վարեցի
մինչեւ ի մահ, կապել եւ մատնել ի
5 բանտս արս եւ կանայս. Որպէս եւ
քահանայապետդ վկայէ ինձ եւ ամե-
նայն ծերակոյտդ, յորոց եւ թուղթս
առեալ առ եղբարս ի Դամասկոս եր-
թայի, ածել եւ անտի կապեալս յԵ-
6 րուսաղէմ, զի պատժեսցին: Եւ եղեւ
ինձ ի գնալն եւ ի մերձենալ ի Դամաս-
կոս, զմիջաւուրբն յանկարծակի յերկ-
նից փայլատակեալ լոյս սաստիկ զինեւ.
7 Եւ անկայ յերկիր, եւ լուայ բարբառ
որ ասէր ցիս, Սաւուղ, Սաւուղ, զի՞

[1]Ոմն., ապաքէն խռնելոց է ամբոխ, զի լսեն

8 հալածես զիս ։ Եւ ես ետու պատաս-
խանի թէ Ո՞վ ես, Տէր. եւ ասէ ցիս,
Ես եմ Յիսուս Նազովրեցի զոր դու
9 հալածես ։ Բայց որ ընդ իս էին՝ զլոյսն
տեսանէին[1], այլ զձայնն ոչ լսէին որ
10 խօսէր ընդ իս ։ Եւ ասեմ, Զի՞նչ արա-
րից, Տէր. եւ ասէ ցիս Տէր, Յարու-
ցեալ երթիցես ի Դամասկոս, եւ անդ
պատմեսցի քեզ վասն ամենայնի որ
11 հրաման է քեզ առնել ։ Իբրեւ ոչ տե-
սանէի ի փառաց լուսոյն այնորիկ, զձե-
ռանէ ձգեալ ի նոցանէ որ ընդ իսն էին,
12 մտի ի Դամասկոս ։ Անանիա ոմն այր
երկիւղած ըստ օրինացն, վկայեալ
յամենայն բնակչաց որ ի Դամասկոս
13 Հրեայքն էին, Եկն եկաց առ իս եւ
ասէ, Սաւուղ եղբայր, ի վեր հայեաց ։
14 Եւ ես նոյնժամայն ի վեր հայեցայ ի նա.
եւ նա ասէ ցիս, Աստուած հարցն մե-
րոց յառաջագոյն ընտրեաց զքեզ ճա-
նաչել զկամս նորա, եւ տեսանել զԱր-
դարն եւ լսել բարբառ ի բերանոյ նո-
15 րա. Զի եղիցես վկայ նորա առ ամե-
նայն մարդիկ որոց տեսերն եւ լուար ։
16 Եւ արդ զի՞ հեղգաս, արի, մկրտեաց
եւ լուա զմեղս քո ի կարդալ զանուն
17 նորա ։ Եւ եղեւ ինձ ի դառնալն յԵ-
րուսաղէմ եւ կալ յաղօթս ի տաճարին,
18 լինել ի զարմացման, Եւ տեսանել զնա
զի ասէր ցիս, Փութա ել յԵրուսա-
ղեմէ վաղվաղակի, քանզի չեն ընդու-
19 նելոց զքո վկայութիւնդ վասն իմ ։ Եւ
ես ասեմ, Տէր, ինքեանք իսկ գիտեն
զի ես էի որ ի բանտ տայի եւ գան
հարկանէի ըստ ժողովրդոցն զհաւա-
20 տացեալս ի քեզ ։ Եւ յորժամ հեղոյր
արիւնն Ստեփանոսի վկայի քո, ես
ինքն էի որ ի վերայ կայի, եւ կամա-
կից լինէի սպանմանն նորա, եւ պահէի
21 զհանդերձս սպանողացն նորա ։ Եւ ասէ
ցիս, Գնա, զի ես ի հեթանոսս հե-
ռաւորս առաքեցից զքեզ ։
22 Եւ ունկն դնէին նմա մինչեւ ցայս
բան, ապա բարձին զձայնս իւրեանց
եւ ասեն, Բարձ յերկրէ զայդպիսին,
23 զի չէ պարտ այդպիսւոյդ կեալ ։ Եւ
յաղաղակելն նոցա եւ ընկենուլ զհան-
24 դերձս եւ զփոշին ցանել յօդս, Հրա-
մայեաց հազարապետն մուծանել զնա
ի բանակն, ասէր, գանիւ հարցանել
զնա, զի գիտասցէ վասն որոյ յանց-
25 ման այնպէս աղաղակէին զնմանէ ։ Եւ
իբրեւ պրկեցին զնա փոկովք, ասէ
Պաւղոս ցհարիւրապետն որ ի վերայ
կայր, Եթէ զայր Հռովմայեցի եւ ան-
պարտ պա՞րտ իցէ ձեզ գան հարկանել ։
26 Իբրեւ լուաւ հարիւրապետն, մատու-
ցեալ առ հազարապետն պատմեաց եւ
ասէ, Զի՞նչ կամիս առնել, քանզի այրս
27 այս Հռովմայեցի է ։ Եւ մատուցեալ
հազարապետն՝ ասէ ցնա, Ասա դու
ցիս, Հռովմայեցի՞ ես. եւ նա ասէ,
28 Այո ։ Պատասխանի ետ հազարապետն,
Ես բազում գլխոց զդինուորութիւնս
զայս ստացայ. ասէ Պաւղոս, Ես ծնեալ
29 իսկ ի դմին եմ ։ Եւ վաղվաղակի ի բաց
կացին ի նմանէ՝ որ [2]հարկանելոյն էին
զնա. եւ հազարապետն իսկ երկեաւ,
իբրեւ գիտաց եթէ Հռովմայեցի է, եւ
զի կապեալ եւս էր զնա ։
30 ԶԶ. Եւ ի վաղիւ անդր կամէր գիտել
զճշմարիտն, թէ զի՞նչ չարախօսութիւն
իցէ Հրէիցն, արձակեաց զնա, եւ հրա-
մայեաց կոչել զքահանայապետսն եւ
զամենայն ատեանն. եւ իջուցեալ ըզ-
Պաւղոս՝ կացոյց ի մէջ նոցա ։

## ԳԼ. ԻԳ

1 Եւ հայեցեալ Պաւղոսի յատեանն՝ ասէ,
Արք եղբարք, ես ամենայն ուղիղ մտօք
գնացեալ եմ առաջի Աստուծոյ մինչեւ
2 ցայսօր ։ Եւ քահանայապետն Անանիա
հրամայեաց սպասաւորացն հարկանել
3 զբերան նորա ։ Յայնժամ Պաւղոս ասէ
ցնա, Հարկանելոց է զքեզ Աստուած,
որմ բռեալ, եւ դու նստիս դատել զիս
ըստ օրինաց, եւ առանց օրինաց հրա-
4 մայես զիս հարկանել ։ Եւ որ շուրջն
կային՝ ասեն, Զքահանայապե՞տ Աս-
5 տուծոյ հայհոյես ։ Եւ ասէ Պաւղոս,
Ոչ գիտէի, եղբարք, եթէ իցէ քահա-
նայապետ. գրեալ իսկ է, Զիշխան ժո-
6 ղովրդեան քո ոչ հայհոյեսցես ։ Իբրեւ
գիտաց Պաւղոս եթէ մի կողմն սա-
դուկեցւոց է եւ միւսն փարիսեցւոց,
աղաղակէր ի մէջ ատենին, Արք եղ-
բարք, ես փարիսեցի եմ, որդի փարի-
սեցւոյ. վասն յուսոյ եւ յարութեան
7 մեռելոց ես աւասիկ դատիմ ։ Եւ զայս

[1] Ոմանք յաւելուն, և զահի հարան

[2] Կամ հարցանելոցն

իբրեւ ասաց, եղեն հերձուածք փարի-
սեցւոցն եւ սադուկեցւոց, եւ պատա-
8 ռեցաւ բազմութիւնն։ Քանզի սադու-
կեցիքն ասեն, Զիք յարութիւն եւ ոչ
հրեշտակ եւ ոչ հոգի, բայց փարիսե-
9 ցիքն խոստովանին զերկոսեան։ Եւ
եղեւ աղաղակ մեծ. յոտն կացին ո-
մանք ի դպրաց անտի ի կողմանէ փա-
րիսեցւոց, հակառակէին եւ ասէին,
Ոչինչ չարութիւն գտանեմք յառնս
յայսմիկ, բայց եթէ հոգի խօսեցաւ ի
10 դմա կամ հրեշտակ[1]։ Եւ ի բազմանալ
ամբոխին՝ երկուցեալ հազարապետն
թէ գուցէ ճեղքիցի Պաւղոս ի նոցանէ,
հրամայեաց զօրականին իջանել յափըշ-
տակել զնա ի միջոյ նոցա, եւ ածել
11 ի բանակն։ Եւ ի վաղուեան գիշերին
եկաց առ նմա Տէր եւ ասէ, Քաջա-
լերեաց, Պաւղէ, զի որպէս վկայեցեր
վասն իմ յԵրուսաղէմ, սոյնպէս պարտ
է քեզ եւ ի Հռոմ վկայել։
12 ՁԷ. Եւ իբրեւ այգ եղեւ, [2]արարեալ
ժողով Հրէիցն՝՝ նզովեցին զանձինս, ոչ
ուտել եւ ոչ ըմպել մինչեւ սպանցեն
13 զՊաւղոս։ Եւ էին աւելի քան զքա-
ռասուն որոց զայս ընդ միմեանս երդ-
14 մնեալ սպառեալ էր։ Որք մատեան առ
քահանայապետսն եւ երիցունս եւ ա-
սեն, Նզովիւք նզովեցաք զանձինս ոչ
ինչ ճաշակել մինչեւ սպանցուք զՊաւ-
15 ղոս։ Բայց դուք զգացուցէք հազարա-
պետին հանդերձ ատենիւն, զի իջուսցէ
զնա առ ձեզ, որպէս թէ կամիցիք
ճշմարտագոյնս ինչ գիտել զնմանէ. եւ
մեք յառաջ քան զմօտել նորա՝ պատ-
16 րաստ եմք ի սպանանել զնա։ Եւ
լուեալ քեռորդւոյն Պաւղոսի զդաւա-
ճանութիւնն՝ եկն եմուտ ի բանակ
17 անդր, պատմեաց Պաւղոսի։ Եւ կո-
չեցեալ Պաւղոսի առ իւր զմի ի հա-
րիւրապետաց անտի՝ ասէ, Զպատանիս
զայս տար առ հազարապետն, զի ունի
18 ինչ պատմել նմա։ Եւ նորա առեալ
զնա տարաւ առ հազարապետն եւ ասէ,
Կապեալն Պաւղոս կոչեաց զիս, եւ ա-
ղաչեաց զպատանիս զայս ածել առ քեզ.
19 ունի ինչ խօսել ընդ քեզ։ Առեալ զձե-
ռանէ նորա հազարապետին՝ գնաց մե-
կուսի, հարցանէր թէ Զի՞նչ ունիս
20 խօսել ընդ իս։ Եւ նա ասէ, Հրեայք
միաբանեցին աղաչել զքեզ, զի ի վա-
ղիւ զՊաւղոս իջուսցես յատեան, իբ-
րեւ թէ կամիցին ինչ ճշմարտագոյնս
21 հարցանել վասն նորա. Արդ դու մի՛
անսայցես նոցա, քանզի դարան գոր-
ծեալ է նմա ի նոցանէ արանց աւելի
քան զքառասուն, որ նզովեցին զան-
ձինս ոչ ուտել եւ ոչ ըմպել՝ մինչեւ
սպանցեն զնա. արդ պատրաստ են եւ
22 սպասեն քում հրամանի։ Ապա հազա-
րապետն արձակեաց զպատանին՝ պատ-
ուիրեալ մի՛ ումեք ասել թէ զայս
զգացուցեր ինձ։
23 Եւ կոչեաց երկուս ի հարիւրապե-
տացն եւ ասէ, Պատրաստեցէք զօրա-
կանս երկերիւր, որպէս զի երթիցեն
մինչեւ ի Կեսարիա, եւ հեծեալս եւ-
թանասուն եւ տիգաւորս երկերիւր,
24 յերից ժամուց գիշերոյն, Եւ գրաստս
պատրաստական՝ որպէս զի իջուցեալ
զՊաւղոս ապրեցուսցեն առ Փելիքս
25 դատաւոր. Գրեալ թուղթ որ ունէր
26 օրինակ զայս. Կղաւդիոս Լիւսիաս,
առ քաջ դատաւորդ Փելիքս, ողջոյն։
27 Զայրս զայս կալեալ ի Հրէից եւ մերձ
ի սպանանել ի նոցանէ, հասեալ ի վե-
րայ զօրականաւ ապրեցուցի, իմա-
28 ցեալ թէ Հռովմայեցի է։ Կամեցայ գի-
տել զպատճառն վասն որոյ ամբաստանէին
զդմանէ, իջուցի զդա յատեան նոցա։
29 Զոր գտի ամբաստանեալ վասն խնդրոյ
իրիք իւրեանց օրինաց. եւ ոչ ինչ ար-
ժանի մահու կամ կապանաց ունէր
30 վնաս։ Իբրեւ ազդ եղեւ ինձ նենգու-
թեան յայրդ լինելոյ [3]ի նոցանէ՝ յղեցի՝՝
առ քեզ. հրաման տուեալ եւ չարա-
խօսացն խօսել զդմանէ առաջի քո.
ողջ լեր։
31 Եւ զօրականացն ըստ հրամանի նո-
րա առեալ զՊաւղոս՝ ածին գիշերայն
32 յԱնտիպատրիս։ Եւ ի վաղիւ անդր ար-
ձակեալ զհեծեալսն ընդ նմա երթալ՝
33 դարձան ի բանակն։ Նոքա մտին ի
Կեսարիա, եւ տուեալ ցդատաւորն
զթուղթն՝ առաջի կացուցին նորա եւ
34 զՊաւղոս։ Իբրեւ ընթերցաւ, եհարց
թէ յորմէ՞ նահանգէ իցէ. եւ ստու-
35 գեալ եթէ ի Կիլիկեայ է, Լուայց քեզ,
ասէ, յորժամ եւ չարախօսքն քո ե-

[1] Ոմանք յաւելուն, մի՛ մարտիցուք ընդ Աստուծոյ
[2] Ոմանք, միաբանեալ ոմանց ի Հրէից

[3] Ոմանք, ի Հրէից՝ իսկոյն յղեցի

*կեսցեն․ եւ հրամայեաց յապարանսն Հերովդի պահել զնա։*

## Գլ․ ԻԴ

1 ԾԱ․ Եւ *յետ հինգ աւուր էջ քահանա-*
*յապետն Անանիա հանդերձ ծերովք*
*ոմամբք, եւ ճարտարախօսաւ Տեր-*
*տիւղեաւ ումամբ, որք եւ զգացուցին*
2 *դատաւորին վասն Պաւղոսի։ Եւ ի կո-*
*չելն զնա՝ սկսաւ Տերտիւղոսն ամբաս-*
*տան լինել եւ ասել, Բազում խաղա-*
*ղութիւն գտեալ է ի քէն եւ իրաց ուղ-*
*ղութիւն ազգիս այսորիկ քով խնամով.*
3 *Ամենայնիւ եւ ամենայն ուրեք շնոր-*
*հակալ եմք, քաջդ Փելիքս, ամենայն*
4 *գոհութեամբ։ Բայց զի մի՛ աւելի եւս*
*աշխատ արարից զքեզ, աղաչեմ լսել*
*մեզ կարճ ի կարճոյ քոյին հեզու-*
5 *թեամբդ։ Գտաք զայրս զայս*
*ապականիչ եւ խռովիչ ամենայն Հրէից*
*որք են ընդ տիեզերս, եւ առաջնորդ*
6 *Նազովրացւոց հերձուածոյն։ Որ եւ*
*զտաճարն իսկ կամեցաւ պղծել․ զոր*
*եւ կալաք, [1]եւ ըստ մերոց օրինաց*
7 *դատել կամեցաք։ Եկեալ Լիւսիաս հա-*
*զարապետ՝ մեծաւ բռնութեամբ ի ձե-*
8 *ռաց մերոց եհան։ Հրամայեաց եւ չա-*
*րախօսացն նորա գալ առ քեզ․՝ յորմէ*
*դու իսկ բաւական լինիցիս վերստին*
*դատեալ, ամենայնի հասու լինել զորոց*
9 *մեքս ամբաստանեմք զդմանէ։ Միա-*
*բանեցին եւ Հրեայքն, ասեն, Այդ-*
*պէս է։*
10 *Պատասխանի ետ Պաւղոս, յակնար-*
*կել նմա դատաւորին խօսել, Ի բա-*
*զում ամաց լինել քեզ դատաւոր ազ-*
*գիս այսորիկ գիտեմ, յօժարութեամբ*
*վասն իմոց իրաց պատասխանի առնեմ։*
11 *Քանզի կարող ես գիտել, զի ոչինչ*
*աւելի է իմ քան զաւուրս երկոտասան*
*յորմէ հետէ ելի երկիր պագանել յԵ-*
12 *րուսաղէմ։ Եւ ոչ ի տաճարի անդ գտին*
*զիս ընդ ումեք խօսեցեալ, եւ կամ*
*ժողովս արարեալ բազմաց, ոչ ի ժո-*
13 *ղովուրդս, Եւ ոչ ի քաղաքի․ եւ ոչ*
*յանդիման առնել կարեն քեզ վասն որոյ*
14 *այժմս չարախօսեն զինէն։ Բայց զայս*
*խոստանամ քեզ, եթէ ըստ ճանապար-*
*հին զոր ասեն հերձուած, այնպէս պաշ-*
*տեմ զհայրենի Աստուածն․ հաւատա-*
*ցեալ ամենայնի որ ինչ յօրէնսն եւ ի*
15 *մարգարէս գրեալ է։ Ունիմ յոյս առ*
*Աստուած, զոր եւ դոքա իսկ ակն*
*ունին թէ յարութիւն լինելոց է[2] ար-*
16 *դարոց եւ մեղաւորաց։ Յորում եւ*
*ես իսկ ճգնիմ, անխիղճ միտս ունել*
*առ Աստուած եւ առ մարդիկ յամե-*
17 *նայն ժամ։ Ի բազում ամաց ողորմու-*
*թիւնս եկի առնել յազգիդ իմում, եւ*
18 *եւ պատարագս․ Որովք գտին զիս*
*սրբեալ ի տաճարին, ոչ բազմօք եւ ոչ*
19 *ամբոխիւ, Ոմանք յԱսիացւոց անտի*
*Հրեայք, որոց պարտ էր գալ առաջի*
*քո եւ ամբաստան լինել, եթէ ունիցին*
20 *ինչ զինէն․ Եւ կամ ինքեանք սոքա*
*ասասցեն, զի՞նչ գտին յիս անիրաւու-*
21 *թիւն մինչդեռ կայի յատենին։ Բայց*
*միայն վասն միոյ բարբառոյս այսորիկ*
*զոր աղաղակեցի մինչ կային ի մէջ նո-*
*ցա, եթէ Վասն յարութեան մեռելոց*
22 *դատիմ ես այսօր ի ձէնջ։ Եւ յապաղ-*
*եաց զնոսա Փելիքս, զի ստուգագոյնս*
*գիտէր վասն ճանապարհին, ասէ, Յոր-*
*ժամ Լիւսիաս հազարապետ իջցէ այսր՝*
23 *տեղեկացայց վասն ձեր։ Հրամայեաց*
*հարիւրապետին պահել զնա եւ ունել*
*յանգարձակի, եւ մի՛ զոք յիւրոց անտի*
*արգելուլ ի պաշտելոյ [3]զնա։*
24 ԾԲ․ *Եւ յետ աւուրց ինչ եկն Փելիքս*
*հանդերձ Դրուսիղաւ կնաւ իւրով, որ*
*էր Հրեայ, կոչեաց զՊաւղոս եւ լուաւ*
*ի նմանէ վասն որ ի Յիսուս Քրիստոս*
25 *հաւատոցն։ Եւ ի խօսելն նորա վասն*
*արդարութեան եւ ժուժկալութեան*
*եւ հանդերձեալ դատաստանին, զահի*
*հարեալ Փելիքս՝ ետ պատասխանի,*
*Դու առ այժմ երթ, եւ յորժամ ժամ*
26 *լիցի, կոչեցից զքեզ։ Միանգամայն եւ*
*ակն ունէր թէ տացի ինչ նմա ի Պաւ-*
*ղոսէ, վասն որոյ եւ սակաւ կոչեցեալ*
27 *զնա խօսէր ընդ նմա։ Եւ ի կատարել*
*երկուց ամաց՝ եկն փոխանակ Փելիքսի*
*Փեստոս Պորկիոս․ իբրեւ կամեցաւ*
*շնորհս առնել Հրէիցն Փելիքս, եթող*
*զՊաւղոս կապեալ։*

## Գլ․ ԻԵ

1 Փ*եստոս իբրեւ եհաս յիշխանութիւնն,*

[1] Ի բաղդատս պակասէ

[2] Ոմանք յաւելուն, մեռելոց,
[3] Ոմանք, զնա, կամ յերթալըն առ նա

յետ երից աւուրց ել յԵրուսաղէմ ի
2 Կեսարեայ։ Եւ զգացուցին նմա [1]քա-
հանայապետքն եւ գլխաւորք Հրէիցն
3 զՊաւղոսէ, Եւ աղաչէին խնդրեալ
շնորհս ի նմանէ. զի կոչեսցէ զնա յԵ-
րուսաղէմ. դարան գործեալ սպանա-
4 նել զնա ի ճանապարհի։ Իսկ Փեստոս
արար պատասխանի պահել զնա ի Կե-
սարիա, թէ ինքն իսկ ընդ հուպ անդր
5 երթալոց էր։ Եւ որ ի ձէնջ կարողք
իցեն, ասէ, ընդ իս իջցեն, եւ եթէ
իցէ ինչ յառնն վնաս, ամբաստան լի-
6 ցին զնմանէ։ Եւ լեալ անդ աւուրս ոչ
աւելի քան զութ կամ զտասն, եկն էջ
ի Կեսարիա. եւ ի վաղիւ անդր նստեալ
յատենի՝ հրամայեաց ածել զՊաւղոս։
7 Եւ իբրեւ եկն, կացին շուրջ զնովաւ
որ յԵրուսաղեմէ իջեալ էին Հրեայքն,
բազում եւ ծանր վնասս դնէին զորս ոչ
8 կարէին ցուցանել։ Քանզի առնէր պա-
տասխանի Պաւղոս եթէ Ոչ յօրէնս Հը-
րէից եւ ոչ ի տաճարն եւ ոչ ի Կայսր
9 ինչ վնասակար եմ։ Բայց Փեստոս կա-
մեցեալ Հրէիցն շնորհս առնել՝ պատաս-
խանի ետ Պաւղոսի եւ ասէ, Կամի՞ս
յԵրուսաղէմ ելանել, եւ անդ վասն դո-
10 ցին իրաց դատել առաջի իմ։ Եւ ասէ
Պաւղոս, Յատենի Կայսեր հասեալ կամ
ուր պարտ է ինձ դատել. Հրէից ինչ
չեմ վնասակար, որպէս եւ դու իսկ
11 քաջ գիտես։ Արդ եթէ վնասակար ի-
ցեմ եւ արժանի ինչ մահու գործեցի,
ոչ զանգիտեմ ի մեռանելոյ. իսկ եթէ ոչ
ինչ իցէ զորոց սոքա ամբաստան լինին
զինէն, ոչ ոք կարէ զիս դոցա շնորհել.
12 ի Կայսր բողոքեմ։ Յայնժամ Փեստոսի
խօսեցեալ ընդ խորհրդակցին՝ արար
պատասխանի, Ի Կայսր բողոքեցեր,
առ Կայսր երթիջիր։
13 ԻԳ. Իբրեւ անցին աւուրք ինչ, Ագ-
րիպպաս արքայ եւ Բերինիկէ եկին
14 ի Կեսարիա յողջոյն Փեստոսի։ Եւ իբ-
րեւ աւուրս բազումս հանէին անդ,
Փեստոս զեկոյց արքայի զՊաւղոսէ եւ
ասէ, Այր մի է աստ մնացեալ կապեալ
15 ի Փելիքսէ։ Վասն որոյ իբրեւ չոգայ
յԵրուսաղէմ, զգացուցին ինձ քահա-
նայապետքն եւ գլխաւորք Հրէիցն,
խնդրէին յինէն առնել նմա պատու-
16 հաս։ Որոց ետու պատասխանի եթէ
Չէ օրէն Հռոմայեցւոց շնորհել ումեք
[2]զոք, մինչչեւ ամբաստանեալն յան-
դիման ունիցի զդատախազսն, եւ տեղի
պատասխանւոյ առնուցու վասն ամ-
17 բաստանութեանն։ Եւ իբրեւ եկին
այսր, ոչինչ յապաղեցի, այլ ի վաղիւն
նստեալ յատենի՝ հրամայեցի ածել
18 զայրն։ Վասն որոյ մատուցեալ ամբաս-
տանքն եւ ոչ մի ինչ վնաս չարութեան
ի մէջ բերէին զորոց ես կարծէի.
19 Բայց խնդիրս ինչ որ վասն իւրեանց
պաշտաման ունէին ընդ նմա, եւ վասն
Յիսուսի ուրումն մեռելոյ, զորմէ ա-
20 սէր Պաւղոս թէ կենդանի է։ Իբրեւ
յանհնարս մտի վասն այսպիսի իրաց
քննութեան, ասեմ եթէ կամիցի՞ եր-
թալ յԵրուսաղէմ, եւ անդ դատել վասն
21 նոցին իրաց։ Բայց ի Պաւղոսի բողո-
քելն զի պահեսցի ի Քաջի արանցն
յանդիմանութիւն, հրամայեցի պահել
զնա՝ մինչեւ տաց տանել առ Կայսր։
22 Ագրիպպաս ցՓեստոս ասէ, Կամէի եւ
ես լսել առնն. եւ նա ասէ, Ի վաղիւ
լուիցես։
23 Եւ ի վաղիւ անդր իբրեւ եկն Ագ-
րիպպաս եւ Բերինիկէ բազում երե-
ւելի սպասուք, եւ մտին յատեանն
հանդերձ հազարապետօքն եւ արամբք
պատուականօք քաղաքին. եւ հրա-
24 մայեալ Փեստոսի՝ ածին զՊաւղոս։ Եւ
ասէ Փեստոս, Արքայ Ագրիպպա, եւ
ամենայն արք որք ընդ մեզ էք, տե-
սանէ՞ք զսա. վասն սորա ամենայն ժո-
ղովք Հրէից ամբաստան եղեն ինձ յԵ-
րուսաղէմ եւ աստ, աղաղակէին թէ
25 Չէ պարտ դմա կեալ։ Բայց ես ի վե-
րայ հասի թէ ոչինչ է դորա արժանի
մահու գործեալ, եւ դորա ինքնին
բողոք կալեալ առ Քաջ արանցն, խոր-
26 հեցայ յղել։ Վասն որոյ ստուգութեամբ
ինչ գրել տեառն իմում ոչ ունիմ.
վասն այնորիկ ածի զդա առաջի ձեր,
եւ մանաւանդ առաջի քո, արքայ Ագ-
րիպպա, որպէս զի վերստին քննեալ՝
27 մարթացից ինչ գրել։ Քանզի անպատեհ
իմն թուի ինձ տալ տանել կապեալ
մի, եւ ոչինչ վնաս զնմանէ նշանա-
կել։

[1] Ոմն+, քահանայապետն

[2] Ոմն+, զոք ի սատակումն

## ԳԼ․ ԻԶ

1 Եւ Ագրիպպաս ասէ ցՊաւղոս, Հրա-
մայեալ է քեզ վասն քո խօսել: Յայն-
ժամ Պաւղոսի ձգեալ զձեռն ասնէր
2 պատասխանի. Վասն ամենայն ամբաս-
տանութեանն Հրէիցդ զինէն, արքայ
Ագրիպպա, համարիմ զանձն երանելի,
զի քո առաջի այսօր տալոց եմ պա-
3 տասխանի: Մանաւանդ զի գիտակ իսկ
ես ամենայն կրօնից եւ խնդրոց Հրէից.
վասն որոյ աղաչեմ երկայնմտութեամբ
4 լսել ինձ: Բանզի կենաց իմոց որ ի
մանկութենէ, ի սկզբանէ լեալ յազգի
անդ իմում յԵրուսաղէմ, տեղեակ են
5 ամենայն Հրեայք: Յառաջագոյն գի-
տեն ի վաղուց հետէ, եթէ կամիցին
վկայել, զի ըստ ճշմարտագոյն կրօնից
օրինացն մերոց կեցեալ եմ փարիսեցի:
6 Եւ արդ վասն յուսոյն առ հարսն ե-
ղելոյ աւետեացն յԱստուծոյ՝ պատեալ
7 կամ յատենի. Յոր երկոտասան ազ-
գատոհմին մերոյ անդադար զցայգ եւ
զցերեկ պաշտեալ ակն ունին հասա-
նել. վասն որոյ յուսոյ ամբաստանիմ,
8 արքայ, ի Հրէիցդ: Զի՞նչ անհաւատ
թուի ձեզ եթէ Աստուած զմեռեալս
9 յարուցանէ: Ես իսկ ինքնին պատշաճ
համարէի զբազում ինչ հակառակ ան-
ուանն Յիսուսի Նազովրեցւոյ գործել:
10 Զոր եւ արարի իսկ յԵրուսաղէմ. եւ
զբազումս ի սրբոցն ես բանտարգել
առնէի, ի քահանայապետիցն առեալ
իշխանութիւն. եւ [1]զսպանելոյն նոցա
11 բերէի համար՝: Եւ ըստ ամենայն ժո-
ղովրդոցն բազում անգամ պատժեալ
զնոսա՝ բռնադատէի հայհոյել. առաւել
եւս մոլեալ ի վերայ նոցա՝ հալածէի
մինչեւ յարտաքին քաղաքսն:
12 ԿԴ․ Որովք գնացեալ ի Դամասկոս՝
իշխանութեամբ եւ հրամանօք քահա-
13 նայապետիցն, Զմիջաւուրբն ի ճանա-
պարհի տեսի, արքայ, յերկնից առա-
ւել քան զլուսաւորութիւն արեգական
ծագեալ զինեւ լոյս, եւ զնոքօք որ
14 ընդ իմն երթային: Եւ յամենեցուն
մեր անկանել յերկիր, լուայ ձայն որ
ասէր ցիս Հեբրայեցւոց բարբառն,
Սաւուղ, Սաւուղ, զի՞ հալածես զիս.
խիստ է քեզ ընդդէմ խթանի աքացել:
15 Եւ ես ասեմ, Ո՞ ես, Տէր. եւ Տէր
ասէ, Ես եմ Յիսուս զոր դուն հալա-
16 ծես: Այլ արի եւ կաց ի վերայ ոտից
քոց, զի վասն այսորիկ երեւեցայ քեզ
առնուլ զքեզ ի ձեռն պաշտօնեայ եւ
վկայ որոց տեսերդ [2]զիս, եւ որոց ե-
17 րեւեցայց քեզ. Փրկել զքեզ ի ժողո-
վրրդենէդ եւ ի հեթանոսաց, յորս ես
18 առաքեցից զքեզ. Բանալ զաչս նոցա,
դարձուցանել ի խաւարէ ի լոյս, եւ
յիշխանութենէ Սատանայի՝ յԱստուած.
առնուլ նոցա զթողութիւն մեղաց,
եւ վիճակ ընդ սուրբս հաւատովքն որ
19 յիս: Ուստի, արքայ Ագրիպպա, ոչ
եղէ անհաւան երկնաւոր տեսլեանն.
20 Այլ նախ որոց ի Դամասկոս եւ յԵրու-
սաղէմ էին, եւ ընդ ամենայն գաւառն
Հրէաստանի եւ ի հեթանոսս, պատ-
մեցի զղջանալ եւ դառնալ յԱստուած
[2]կենդանի, արժանի ապաշխարութեան
21 գործս գործել: Վասն այսորիկ Հրէից
կալեալ զիս ի տաճարին՝ կամէին սպա-
22 նանել: Օգնութիւն հասեալ առ յԱս-
տուծոյ՝ մինչեւ ցայսօր կացի վկայեալ
փոքու եւ մեծի, ոչ ինչ արտաքոյ ա-
սել քան զոր մարգարէքն եւ Մովսէս
23 խօսեցան զհանդերձելոցն լինելոյ. Եթէ
չարչարելոց է Քրիստոսն, եթէ առա-
ջին ի յարութենէ մեռելոց՝ լոյս պատ-
մելոց է ժողովրդեանն եւ հեթանո-
սաց:
24 Եւ նորա զայս պատասխանի տուեալ,
Փեստոս ի ձայն մեծ ասէ, Մոլիս,
Պաւղէ, բազում գրութիւնք զքեզ
25 ի մոլութիւն դարձուցանեն: Իսկ Պաւ-
ղոս ասէ, Ոչ մոլիմ, քաջդ Փեստոս,
այլ զցածութեան եւ զճշմարտութեան
26 բանս բարբառիմ: Գիտակ իսկ է այ-
սոցիկ արքայ, ընդ որում եւ համար-
ձակեալդ խօսիմ. քանզի ծածկել ի քէն
ինչ ի սոցանէ չառնում յանձն. զի
ոչ եթէ յանկեան ուրեք գործեալ իցէ
27 այս: Հաւատա՞ս, արքայ Ագրիպպա,
28 մարգարէից. գիտեմ զի հաւատաս: Եւ
ասէ Ագրիպպաս ցՊաւղոս, Փոքու իմն
հաւանեցուցանես զիս լինել քրիստոնե-
29 այ: Եւ Պաւղոս ասէ, Խնդրէի յԱս-
տուծոյ եւ՛ փոքու եւ՛ մեծաւ ոչ միայն
զքեզ, այլ զամենեսեան որ լսեն ինձ

[1]Յոյնն, ի սպանանել նոցա տայի հաւանութիւն

[2]Յոմանս պակասէ

այսօր՝ լինել այսպիսի որպէս եւ ես եմ,
բաց ի կապանաց աստի։
30 Յոտն եկաց արքայն եւ դատաւորն
եւ Բերինիկէ, եւ որ ընդ նոսայն նըս-
31 տէին։ Եւ իբրեւ գնացին, խօսէին ընդ
միմեանս եւ ասէին թէ Ոչ ինչ արժա-
նի մահու կամ կապանաց գործէ այրս
32 այս։ Իսկ Ագրիպպաս ցՓեստոս ասէ,
Արձակել մարթ էր զայրս զայս, եթէ
ոչ էր բողոքեալ ի Կայսր։

## ԳԼ. ԻԷ

1 ԿԵ. Իբրեւ հրամայեցաւ մեզ նաւել
յԻտալիա, տային զՊաւղոս եւ զայլս
ոմանս կապեալս ցհարիւրապետ մի,
որում անուն էր Յուլիոս, Սեբաստեան
2 գնդին։ Եւ ելեալ ի նաւ մի Ադրամիտն-
տացի, որ երթալոց էր ի կողմանս Ա-
սիացւոց, գնացաք. էր ընդ մեզ եւ
Արիստարքոս Մակեդոն Թեսաղոնի-
3 կեցի։ Եւ ի վաղիւ անդր իջաք ի Սի-
դոն. եւ մարդասիրութիւն ցուցեալ
Յուլեայ առ Պաւղոս, հրամայեաց առ
բարեկամսն երթալ եւ զարման գտա-
4 նել։ Եւ անտի ելեալ խոնարհագոյն
նաւեցաք ի Կիպրոս վասն հողմոյն ընդ-
5 դէմ լինելոյ։ Յայնժամ ընդ մէջ ծովուն
Կիլիկեայ եւ Պամփիլեայ նաւեալ՝ իջաք
6 ի Միւռա Լիկիացւոց։ Եւ անդ գտեալ
հարիւրապետին նաւ մի Աղեքսանդ-
րացի որ երթայր յԻտալիա՝ եմոյծ զմեզ
7 անդր։ Եւ ի բազում աւուրս ծանրա-
նաւեալք՝ հազիւ հասաք առ Կնիդեաւ.
եւ ի չթողացուցանել մեզ հողմոյն,
նաւեցաք խոնարհագոյն ի Կրետէ առ
8 Սաղմոնեաւ։ Հազիւ անցեալ առ նո-
վաւ՝ եկաք ի տեղի ինչ որ կոչէր Գե-
ղեցիկ Նաւահանգիստ, յոր հուպ էր
9 քաղաքն Ղասեա։ Եւ իբրեւ բազում
ժամանակք անցանէին, եւ սխալ եւս
լինէր նաւելոյն. եւ վասն այն ինչ եւս
պահոցն անցանելոյ, տայր խրատ Պաւ-
10 ղոս, Եւ ասէր ցնոսա, Արք, տեսա-
նեմ զի թշնամանօք եւ բազում վնասու
ոչ միայն բեռինդ եւ նաւիդ, այլ եւ
անձանց մերոց լինելոց է նաւարկու-
11 թիւնս։ Իսկ հարիւրապետն նաւապե-
տին եւ նաւավարին առաւել անսայր
12 քան բանիցն Պաւղոսի։ Իբրեւ դժպա-
տեհ իմն թուէր նաւահանգիստն առ
ի ձմերել, բազումք խորհեցան գնալ
անտի. թերեւս կարասցեն հասանել
ի Փիւնիկէ՝ ձմերել ի նաւահանգստին
Կրետացւոց որ հայէր ընդ հարաւա-
13 կողմն եւ ընդ աչխարհն։ Եւ ի շնչել
հարաւոյն, համարեցան ուր դիմեալն
էին՝ հասանել. եւ արկեալ՝ մօտ ան-
14 ցանէին առ Կրետեաւ։ Եւ ոչ յետ բա-
զում ժամուց անկաւ զնովաւ հողմ
15 ուռուցիկ, որ կոչի Եւրակիկլոմն։ Ընդ
յափշտակել նաւին եւ ի չհանդուրժել
ընդդէմ հողմոյն, թոյլ տուեալ երթա-
16 յաք եւ գայաք։ Ի կղզի ինչ դիմեալ
որ կոչէր Կղաւդա, հազիւ կարացաք
17 ըմբռնել զմակոյկն. [1]Զոր առեալ՝ յօգ-
նականութիւն կապէին ընդ նաւն".
երկուցեալք թէ գուցէ ի յորձանուտն
անկանիցին, իջուցեալ զառագաստն՝
18 այնպէս երթային եւ գային։ Եւ ի
սաստկագոյն վշտանալոյն մերոյ ի վա-
ղիւ անդր զկարասին ընկեցին առնէին.
19 Եւ յերիր աւուր ընդ [2]իւրեանց ձեռն
20 զգործին նաւին [3]ընկեցին։ Իբրեւ ոչ
արեւ եւ ոչ աստեղք երեւէին ի բա-
զում աւուրս, եւ ձմեռն ոչ սակաւ
կայր ի վերայ, ապա բառնայր ամենայն
21 յոյս փրկութեան մերոյ։ Եւ զի բա-
զում աւուրս նօթի էին, յայնժամ
Պաւղոս կացեալ ի մէջ նոցա՝ ասէ,
Պարտ էր ձեզ, ով արք, անսալ ինձ եւ
ոչ ելանել ի Կրետեայ եւ շահել զվիշտս
22 զայս եւ զվնաս։ Եւ արդ խրատեմ
զձեզ քաջալերել, զի վնաս անձին եւ
ոչ միում ի ձէնջ լինիցի բաց ի նաւէդ.
23 Քանզի երեւեցաւ ինձ յայսմ գիշերի
հրեշտակ Աստուծոյ որոյ եմն եմ եւ
24 պաշտեմ զնա, Եւ ասէ, Մի՛ երկնչիր,
Պաւղէ, Կայսեր եւս պարտ է քեզ յան-
դիման լինել. եւ ահա շնորհեալ է քեզ
Աստուծոյ զամենեսեան որ են ընդ քեզ
25 ի նաւիդ։ Վասն այսորիկ քաջալերե-
ցարուք, արք, զի հաւատամ յԱս-
տուած եթէ այսպէս լինի զոր օրինակ
26 խօսեցաւ ընդ իս։ Բայց ի կղզի ինչ
հասանէ մեզ անկանել։
27 ԿԶ. Իբրեւ չորեքտասաներորդ գիշեր
լինէր, մինչդեռ ծփէաք ի Հանդրին
անդունդս, ի մէջ գիշերին կարծէին
նաւավարքն եթէ հասեալ իցեն յաշ-

---

[1] Յօյնն, Զօր առին, և օգնութիւնս ի կիր արկեալ՝ ածին պարան զնաւաւն
[2] Ոմանք, մեր
[3] Ոմանք, ընկեցաք

28 խարհ ուրեք․ Եւ ընկեցեալ զգունդսն՝
գտին գիրկս քսան, եւ սակաւ ինչ
դադարեալ՝ դարձեալ ընկեցին եւ գտին
29 գիրկս հնգետասան․ Զահի հարեալ թէ
գուցէ ի խիստ ինչ տեղիս անկանիցին,
յետուստ կողմանէ ընկեցին խարիսխս
30 չորս, ըղձանային այգուն լինելոյ․ Բայց
նաւավարքն խնդրէին փախչել ի նաւէ
անտի, եւ իջուցեալ զկուրն ի ծով
անդր՝ պատճառանօք որպէս թէ յառա-
ջոյ կողմանէ խարիսխս ձգելոց իցեն․
31 Ասէ Պաւղոս ցհարիւրապետն եւ ցզօ-
րականսն, Եթէ ոչ դոքա մնան ի նա-
32 ւիս, դուք ապրել ոչ կարէք․ Յայն-
ժամ զօրականքն հատին զլարս կրին
33 եւ ի բաց ընկեցին․ Եւ մինչդեռ այգն
կամէր լինել, աղաչէր Պաւղոս զամե-
նեսեան առնուլ կերակուր, ասէ, Այս
չորեքտասաներորդ օր է որում ակն
ունիք նօթիս կատարել, եւ չէ ինչ ճա-
34 շակեալ․ Վասն որոյ աղաչեմ զձեզ ճա-
շակել կերակուր, զի այն իսկ վասն
ձերոյ փրկութեան է․ զի ոչ ուրուք
35 ի ձէնջ մազ մի ի գլխոյ կորիցէ․ Եւ
իբրեւ ասաց զայս, առեալ հաց՝ գո-
հացաւ զԱստուծոյ առաջի ամենեցուն,
36 եբեկ եւ սկսաւ ուտել․ Եւ քաջալե-
րեցան ամենեքին, եւ նոքա առին կե-
37 րակուր․ Եւ էաք ամենայն հոգիք ի
նաւին երկերիւր եւթանասուն եւ վեց․
38 Իբրեւ յագեցան կերակրովն, թեթե-
ւացուցին զնաւն՝ թափեալ զցորեանն
ի ծովն․
39 Եւ իբրեւ այգ եղեւ, զերկիրն ոչ ճա-
նաչէին, բայց զգոգ մի նշմարէին թէ
ափն ծովուն իցէ․ յոր խորհէին, թէ
40 հնար ինչ իցէ, զերծուցանել զնաւն․ Եւ
զխարիսխսն հատեալ՝ ընկեցին ի ծովն,
թողացուցին զխառնելիս թեւոցն, եւ
[1]ի բաց առին՛՛ զառագաստն, եւ ետուն
41 հողմոյն յափն կոյս ծովուն․ Անկեալ
ի տեղի մի երկծով՝ թիւրեցին զնաւն․
եւ առաջին կողմն նաւուն խրեալ ան-
շարժ մնայր, եւ յետին կողմն քակէր
42 [2]ի բռնութենէն․ Եւ զօրականացն
խորհուրդ արարեալ զի զկապեալսն
սպանցեն, եւ զի մի՛ ոք լուղիցի եւ
43 փախիցէ․ Եւ հարիւրապետն քանզի
կամեցաւ ապրեցուցանել զՊաւղոս՝
արգել զնոսա ի խորհրդոյն․ հրամայ-
եաց զի որ կարողն իցեն լուղել՝ ան-
կանիցին նախ եւ ի ցամաքն ելանի-
44 ցեն․ Եւ զայլսն՝ զո՛րս ի տախտակս,
եւ զո՛րս յայլ ինչ կահ ի նաւէ անտի․
եւ այսպէս եղեւ ամենեցուն փրծանել
յերկիր․

ԳԼ․ ԻԸ

1 Եւ ապրեալք՝ յայնժամ գիտացաք թէ
[3]Մելիտինէ էր անուն կղզւոյն․ բայց
բարբարոսքն չնորհեցին ոչ սակաւ
2 մարդասիրութիւն մեզ․ Քանզի լուցին
խարոյկ, եւ ընկալան զամենեսեան
զմեզ վասն անձրեւին որ ստիպէր եւ
3 վասն ցրտոյն․ Եւ ի ժողովել Պաւղոսի
խռիւ ինչ բազում եւ դնել ի վերայ
խարուկին, իժ մի ի ջերմութենէն ել-
4 եալ՝ կալաւ զձեռանէ նորա․ Եւ իբրեւ
տեսին բարբարոսքն կախեալ զգազանն
զձեռանէ նորա, ասէին ցմիմեանս,
Ուրեմն սպանող է այրս այս, որ թէ-
պէտեւ ապրեցաւ ի ծովէն, իրաւունքն
5 չետուն կեալ․ Եւ նորա թօթափեալ
զգազանն ի հուրն, եղեւ նմա չար եւ
6 ոչինչ․ Եւ նոքա ակն ունէին նմա
այտնլոյ կամ անկանելոյ եւ յանկար-
ծակի մեռանելոյ․ իբրեւ չատ ակն կալ-
եալ եւ տեսանէին թէ ոչինչ վնաս եղեւ
նմա, դարձեալ դարձուցին զբանսն եւ
7 ասէին թէ աստուած ոմն է․ Եւ շուրջ
զտեղեաւն զայնուիկ էին գեղք գլխա-
ւորի կղզւոյն որում անուն էր Պոպ-
ղիոս․ որ առ զմեզ յերաչխի զերիս
8 աւուրս եւ սիրով ընկալաւ․ Եւ եղեւ
հօրն Պոպղեայ ի ջերմն եւ յախտ թան-
չից հիւանդանալ դնել․ առ որ մտեալ
Պաւղոս եւ կացեալ յաղօթս՝ եդ զձեռն
9 եւ բժշկեաց զնա․ Եւ իբրեւ այս եղեւ,
այլ հիւանդք որ էին ի կղզւոջն՝ գային
10 եւ բժշկէին, Որք եւ բազում պա-
տուովք պատուեցին զմեզ․ եւ իբրեւ
գնացաք, ետուն որ ինչ պէտք էին․
11 ԻԷ․ Եւ յետ երից ամսոց ելաք ի նաւ
մի Աղեքսանդրացի որ ձմերեալ էր ի
կղզւոջն նշանաւորաւ Դիոսկուրա-
12 ցւոց․ Եւ իջեալ ի Սիրակուսա՝ եղեաք
13 աւուրս երիս․ Ուստի գնացեալ հա-
սաք ի Հռեգիովն․ եւ յետ աւուր միոյ

[1]Յօյնն, բացին
[2]Ոմանք, ի բռնութենէ ալեաց

[3]Յօյնն, Մելիտե

ի չնչել հարաւոյն, երկօրեայք եկաք
14 ի Պատիողոս ։ Ուր եւ գտաք եղբարս,
աղաչեցեալք ի նոցանէ լինել աւուրս
15 եւթն. եւ ապա եկաք ի Հռոմ։ Եւ
անտի լուեալ եղբարց զմէնջ՝ ելին ընդ
առաջ մեր մինչեւ յՈրգոստայն Ապփեայ
եւ Երիցն Կրպակաց. զորս տեսեալ
Պաւղոսի գոհացաւ զԱստուծոյ եւ քա-
ջալերեցաւ ։
16 Եւ իբրեւ մտաք ի Հռոմ, [1]հրամա-
յեցաւ Պաւղոսի լինել առանձինն հան-
դերձ զինուորաւն պահպանաւ իւրով։
17 Եւ եղեւ յետ երից աւուրց կոչել նմա
զՀրէիցն գլխաւորս. եւ իբրեւ եկին,
ասէ ցնոսա, Ես, արք եղբարք, ոչինչ
հակառակ գործեալ ժողովրդեանն կամ
կրօնիցն հայրենեաց, կապեալ յԵրուս-
աղեմէ մատնեցայ ի ձեռս Հռոմայե-
18 ցւոց ։ Որք իբրեւ գտեցան զիս, կա-
մեցան արձակել, վասն եւ ոչ մի ինչ
19 վնաս մահու գտանելոյ յիս ։ Ի հակա-
ռակել Հրէիցն՝ հարկ եղեւ բողոքել ի
Կայսր, իբր ոչ եթէ զազգէն իմմէ ու-
20 նէի ինչ չարախօսել ։ Վասն այսր պատ-
ճառանաց աղաչեցի զձեզ՝ տեսանել եւ
խօսել. քանզի վասն յուսոյն Իսրայելի
21 կամ ի շղթայս յայսոսիկ ։ Եւ նոքա
ասեն ցնա, Մեք ո՛չ թուղթս ինչ վասն
քո ընկալաք ի Հրէաստանէ, եւ ո՛չ եկ-
եալ ոք յեղբարց պատմեաց կամ խօսե-
22 ցաւ ինչ վասն քո չարութիւն ։ Բայց
աղաչեմք ի քէն լսել թէ զինչ խորհի-
ցիս. զի վասն հերձուածոյդ այդորիկ
յայտ իսկ է մեզ, զի ամենայն ուրեք
23 հակառակութիւն կրէ ։ Ժամ եդեալ
նմա օր մի, եկին ի վանսն առ նա բա-
զումք, որոց պատմէր վկայութեամբ
զարքայութիւն Աստուծոյ. եւ հաւա-
նեցուցանէր զնոսա վասն Յիսուսի յօ-
րինացն Մովսիսի եւ ի մարգարէից
24 յայգուէ մինչեւ ցերեկոյ ։ Եւ ոմանք
հաւանէին բանիցն, եւ կէսք չհաւա-
25 տային ։ Եւ անմիաբանք լեալ ի մի-
մեանց՝ արձակէին, յասելն Պաւղոսի
բան մի թէ Բարւոք խօսեցաւ Հոգին
Սուրբ ի ձեռն Եսայեայ մարգարէի առ
26 հարսն մեր, Եւ ասէ, Երթ առ ժողո-
վուրդն, եւ ասասցես, Լսելով լուիջիք
եւ մի՛ իմասջիք, եւ տեսանելով տես-
27 ջիք եւ մի՛ տեսջիք. Զի թանձրացաւ
սիրտ ժողովրդեանն այնորիկ, եւ ա-
կանջօք իւրեանց ծանր լուան, եւ զաչս
իւրեանց կափուցին, զի մի՛ երբեք
տեսցեն աչօք, եւ ականջօք լուիցեն, եւ
սրտիւք իմասցին եւ դարձցին, եւ բժշ-
28 կեցից զնոսա ։ Եւ արդ յայտնի լիցի ձեզ,
զի հեթանոսաց առաքեցաւ փրկու-
թիւնս Աստուծոյ, նոքին եւ լուի-
29 ցեն ։ [2]Եւ իբրեւ զայս ասաց, արտաքս
գնացին ի նմանէ Հրեայքն, որք ունէ-
ին ի մէջ իւրեանց զբազում խնդիրս ։
30 Եւ եղեւ զերկեամ մի բովանդակ
31 իւրով վարձու ։ Եւ ընդունէր զամե-
32 նեսեան որ մտանէին առ նա ։ Քարո-
զէր զարքայութիւնն Աստուծոյ, եւ ու-
սուցանէր վասն Տեառն Յիսուսի Քրիս-
տոսի անխափան ամենայն համարձա-
կութեամբ ։

[1] Ոմանք, յանձն արար հարիւրապետն զկապեալսն զօրապետին, և հրամայեցաւ

[2] Այս համար պակասէ յոմանս

# ՊԱՒՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԱՌ ՀՌՈՎՄԱՅԵՑԻՍ

### ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 ԱԲ. ՊԱՒՂՈՍ, *ծառայ Յիսուսի Քրիս-*
*տոսի, կոչեցեալ առաքեալ, որոշեալ*
2 *յաւետարանն Աստուծոյ. Որ յառաջ*
*խոստացաւ ի ձեռն մարգարէից իւրոց*
3 *գրովք սրբովք, Վասն Որդւոյ իւրոյ*
*եղելոյ ի զաւակէ Դաւթի ըստ մարմնոյ,*
4 *Սահմանելոյ Որդւոյն Աստուծոյ զօրու-*
*թեամբ ըստ Հոգւոյն սրբութեան. ի*
*յարութենէ մեռելոց Յիսուսի Քրիս-*
5 *տոսի Տեառն մերոյ. Որով ընկալաք*
*շնորհս եւ առաքելութիւն՝ ի հնազան-*
*դութիւն հաւատոց յամենայն հեթա-*
6 *նոսս վասն անուան նորա. Յորս եւ*
*դուք էք կոչեցեալ Յիսուսի Քրիստո-*
7 *սի. Ամենեցուն որոց էք ի Հռովմ, սի-*
*րելեաց Աստուծոյ՝ կոչեցելոց սրբոց,*
*շնորհք ընդ ձեզ եւ խաղաղութիւն*
*յԱստուծոյ Հօրէ մերմէ եւ ի Տեառնէ*
*Յիսուսէ Քրիստոսէ։*
8 *Նախ գոհանամ զԱստուծոյ իմոյ ի*
*ձեռն Յիսուսի Քրիստոսի վասն ձեր*
*ամենեցուն. զի հաւատք ձեր պատ-*
9 *մեալ են ընդ ամենայն աշխարհ։ Վկայ*
*է ինձ Աստուած, զոր պաշտեմն հոգ-*
*ւով իմով յաւետարանի Որդւոյ նորա,*
*թէ ո՛րպէս զյիշատակս ձեր* [1]*առնեմ.*
10 *Յամենայն ժամ յաղօթս իմ աղաչելով՝*
*զի թերեւս երբեք յաջողեսցի ինձ կա-*
11 *մօքն Աստուծոյ գալ առ ձեզ։ Քանզի*
*անձկացեալ եմ տեսանել զձեզ, զի փո-*
*խեցից ի ձեզ շնորհս ինչ հոգեւորս առ*
12 *ի հաստատել զձեզ. Այսինքն է մխի-*
*թարակից լինել ձեզ վասն ընդ միմեանս*
13 *իմոյ եւ ձերդ հաւատոց։ Ոչ կամիմ*
*եթէ տգէտ իցէք, եղբարք, զի բա-*
*զում անգամ յօժարեցի գալ առ ձեզ,*
*եւ արգելայ մինչեւ ցայժմ. զի եւ*
*ի ձեզ գտից պտուղ ինչ որպէս եւ յայլ*
14 *հեթանոսս։ Քանզի Յունաց եւ Բար-*
*բարոսաց, իմաստնոց եւ անմտից պար-*
15 *տապան եմ. Այնպէս՝ որչափ իմով-*
*սանն յօժարութեամբ, եւ ձեզ որ ի*
*Հռովմդ էք՝ աւետարանել։*
16 *Զի ոչ եթէ ամօթ ինչ համարիմ զա-*
*ւետարանն, քանզի զօրութիւն Աս-*
*տուծոյ է ի փրկութիւն ամենայն հա-*
*ւատացելոց. նախ Հրէի եւ ապա հե-*
17 *թանոսի։ Զի արդարութիւնն Աստու-*
*ծոյ նովաւ յայտնի հաւատոց ի հաւատս.*
*որպէս եւ գրեալ է թէ Արդարն ի հա-*
*ւատոց կեցցէ։*
18 ԱԳ. *Քանզի յայտնելոց է բարկու-*
*թիւն Աստուծոյ յերկնից ի վերայ ա-*
*մենայն ամբարշտութեան եւ անիրա-*
*ւութեան մարդկան, որք զճշմարտու-*
19 *թիւնն անիրաւութեամբ ունին. Վասն*
*զի գիտութիւնն Աստուծոյ յայտնի է*
*ի նոսա. քանզի Աստուած իսկ յայտ-*
20 *նեաց նոցա։ Զի աներեւոյթք նորա*
*ի սկզբանէ աշխարհի արարածովքս ի-*
*մացեալ տեսանին, այսինքն է* [2]*մշտըն-*
*ջենաւորութիւն եւ զօրութիւն" եւ*
*աստուածութիւն նորա. զի ոչ գտա-*
*նիցեն ամենեւին տալ պատասխանի։*
21 *Զի ծանեան զԱստուած, եւ ոչ իբրեւ*
*զԱստուած փառաւորեցին կամ գոհա-*
*ցան. այլ նանրացան ի խորհուրդս*
*իւրեանց, եւ խաւարեցան անմտու-*
22 *թեամբ սիրտք նոցա։ Զանձինս առ*
23 *իմաստունս ունէին, յիմարեցան։ Եւ*
*փոխեցին զփառս անեղծին Աստուծոյ*
*ի նմանութիւն պատկերի եղծանելի*
*մարդոյ եւ թռչնոց եւ չորքոտանեաց*
24 *եւ սողնոց։ Վասն որոյ մատնեաց զնո-*

[1] Յոյն, առնեմ անդադար

[2] Յոյն, մշտնջենաւոր զօրութիւն

սա Աստուած ի ցանկութիւն սրտից
նոցա ի պղծութիւն, անարգել զմար-
25 մինս իւրեանց յանձինս իւրեանց. Որք
փոխանակեցին զճշմարտութիւնն Աս-
տուծոյ ընդ ստութեան. [1]հնազանդե-
ցան եւ պաշտեցին զարարածս եւ ոչ
զԱրարիչն, որ է օրհնեալ յաւիտեանս։
26 Ամէն։ Վասն այնորիկ մատնեաց զնո-
սա Աստուած ի կիրս անարգութեան,
զի էգք նոցա փոխանակեցին զպէտս
27 բնականս ի պէտս անբնականս։ Նոյն-
պէս եւ արուացն թողեալ զբնական
պէտս իգութեանն, բորբոքեցան ցան-
կութեամբք իւրեանց ի միմեանս, ա-
րուք ընդ արուս զխայտառակութիւն
գործէին, եւ զզարձ փոխարինին որ
պարտ էր մոլորութեանն նոցա՝ յան-
28 ձինս իւրեանց ընդունէին։ Եւ որպէս
զի ոչ ընտրեցին զԱստուած ունել ի
գիտութեան, մատնեաց զնոսա Աս-
տուած ի միտս անարգութեան՝ գոր-
29 ծել զանարժանս. Զլցեալսն ամենայն
անիրաւութեամբ, պոռնկութեամբ,
անզգամութեամբ, ագահութեամբ, չա-
րութեամբ, լի նախանձու, սպանու-
թեամբ, հեռիւ, նենգութեամբ, չա-
30 րաբարութեամբ. չոգմողք, Զարա-
խօսք, աստուածատեացք, թշնամա-
նողք, ամբարտաւանք, ամբարհաւաճք,
գտիչք չարեաց, զծնողս անարգուք,
31 Անմիտք, ուխտադրուժք, անագո-
32 րոյնք, [2]աննուէրք, անողորմք. Որք
հասեալ էին յԱստուծոյ իրաւանցն վե-
րայ եթէ ույք զայսպիսին գործեն ար-
ժանի են մահու. եւ ոչ միայն որ զայն
առնեն, այլ եւ որ կամակիցն լինին
գործելեացն։

## ԳԼ. Բ

1 Վասն որոյ առանց պատասխանի տա-
լոյ ես, ով մարդ, որ դատիսդ. զի
որով դատիս զընկերն՝ զանձն քո դա-
տապարտես, զի դու զնոյն գործես՝
որով դատիսն։
2 ԱԴ. Գանզի գիտեմք, եթէ Աստուծոյ
դատաստանն ճշմարտութեամբ է ի վե-
րայ այնոցիկ որ զայնպիսին գործեն։
3 Իսկ արդ խորհիցի՞ս զայս, ով մարդ,
որ դատիս զայնոսիկ որ զայնպիսին
գործեն, եւ դու զնոյն գործես, եթէ
դու ապրելոց իցես ի դատաստանացն
4 Աստուծոյ։ Եթէ զմեծութեամբ քաղ-
ցրութեան նորա եւ զներելոյն եւ զեր-
կայնմտութեամբն արհամարհիցես, չգի-
տիցե՞ս զի քաղցրութիւնն Աստուծոյ
5 զքեզ յապաշխարութիւն ածէ. Այլ
ըստ խստութեան քում եւ ըստ ան-
զեղջ սրտի՝ զանձես անձին քում բար-
կութիւն յաւուր բարկութեան եւ
յայտնութեան արդար դատաւորու-
6 թեանն Աստուծոյ. Որ հատուցանէ իւ-
7 րաքանչիւր ըստ գործս իւրեանց. Որ
համբերութեամբ են ի գործս բարու-
թեան՝ զփառս եւ զպատիւ եւ զանեղ-
ծութիւն խնդրեն, զկեանսն յաւի-
8 տենից։ Իսկ որ ի հակառակութենէ
անտի են եւ ապստամբք ի ճշմարտու-
թենէն եւ զհետ երթեալ զանիրաւու-
թեան՝ բարկութիւն եւ սրտմտութիւն,
9 Նեղութիւն եւ անձկութիւն ի վերայ
ամենայն մարդոյ որ գործէ զչար, նախ
10 Հրէի եւ ապա հեթանոսի։ Փառք, պա-
տիւ եւ խաղաղութիւն ամենայնի որ
գործէ զբարի, նախ Հրէի եւ ապա
11 հեթանոսի։ Զի ոչ է ակնառութիւն
առաջի Աստուծոյ։
12 ԱԵ. Որք միանգամ արտաքոյ օրի-
նացն մեղան՝ արտաքոյ օրինացն եւ
կորնչին. եւ որք ընդ օրինօքն մեղան՝
13 օրինօքն եւ դատեսցին. (Զի ոչ եթէ
որ լսելիք օրինացն են՝ արդարացեալ
են առաջի Աստուծոյ, այլ առնելիք օ-
14 րինացն արդարասցին։ Այլ յորժամ
հեթանոսք որ զօրէնս ոչ ունին՝ բնու-
թեամբ զօրինացն գործիցեն, նոքա որ
զօրէնս ոչ ունին՝ անձանց իւրեանց
15 իսկ են օրէնք. Որք ցուցանեն զգործս
օրինացն գրեալ ի սիրտս իւրեանց՝ վկա-
յութեամբ մտաց իւրեանց, եւ յանդի-
մանել զմիմեանս ի խորհրդոց իւր-
եանց, կամ թէ պատասխանի իսկ տալ.)
16 Յաւուրն յորում դատիցի Աստուած
զգաղտնիս մարդկան ըստ աւետարա-
նիս իմում ի ձեռն Յիսուսի Քրիստոսի։
17 Ապա եթէ դու Հրեայ անուանեալ
ես, եւ յեցեալ ես յօրէնսն, եւ պարծիս
18 յԱստուած, Եւ գիտես զկամս նորա,
եւ ընտրես զլաւն, եւ խրատեալ ես յօ-
19 րինացն. Վստահ ես յանձն քո առաջ-
նորդ լինել կուրաց, լոյս խաւարե-
20 լոց։ Խրատիչ անզգամաց, վարդապետ

[1]Յոյնն, երկիր պագին [2]Յոմանս [illegible]

տղայոց, ունել զկերպարանս գիտու-
թեան եւ ճշմարտութեան յօրինացն։
21 Իսկ արդ որ ուսուցանես զընկերն՝
զանձն քո ո՞չ ուսուցանես․ որ քարո-
22 զես չգողանալ՝ գողանա՞ս․ Որ ասես
չշնալ՝ շնա՞ս․ որ գարշիս ի մեհենաց՝
23 զսեղա՞նս կողոպտես․ Որ օրինօքն
պարծիս՝ յանցանել ըստ օրէնսն զԱս-
24 տուա՞ծ անարգես։ Զի անունն Աս-
տուծոյ վասն ձեր հայհոյի ի մէջ հե-
թանոսաց, որպէս եւ գրեալ է։
25 ԱԶ․ Թլփատութիւն օգնէ, եթէ զօ-
րէնսն պահիցես․ ապա եթէ յանցա-
ւոր օրինացն իցես, թլփատութիւն քո
26 անթլփատութիւն եղեւ։ Իսկ եթէ
անթլփատութիւնն զիրաւունս օրի-
նացն պահիցէ, ո՞չ ապաքէն անթլփա-
տութիւն նորա ի թլփատութիւն հա-
27 մարեսցի․ Եւ դատիցի որ ի բնէ ան-
թլփատութիւնն է, զօրէնսն կատարե-
լով, զքեզ որ գրովն եւ թլփատու-
28 թեամբն յանցաւոր օրինացն իցես։ Զի
ոչ եթէ որ յայտնի Հրեայն է, եւ ոչ
որ յայտնի մարմնով թլփատութիւնն,
29 Այլ որ ի ծածուկ Հրեայն է, եւ թլփա-
տութիւն սրտի, հոգւով եւ ոչ գրով․
որոյ գովութիւնն ոչ ի մարդկանէ է,
այլ յԱստուծոյ։

Գլ․ Գ

1 Իսկ արդ զի՞նչ աւելի է Հրէին, կամ
զի՞նչ օգուտ ի թլփատութենէ անտի։
2 Բազում ինչ ամենայն իրօք․ նախ այն
իսկ՝ զի հաւատարիմ եղեն պատգամքն
3 Աստուծոյ։ Իսկ արդ եթէ չէր հաւա-
տացեալ ոմանց, միթէ անհաւատու-
թիւն նոցա զԱստուծոյ հաւատսն խա-
4 փանէ՞ր․ քաւ լիցի։ Արդ եղիցի Աս-
տուած ճշմարիտ, եւ ամենայն մարդ՝
սուտ, որպէս եւ գրեալ է, Որպէս ար-
դար եղիցես ի բանս քո, եւ յաղթես-
5 ցես ի դատել քեզ։ Իսկ արդ եթէ ա-
պիրատութիւն մեր զԱստուծոյ ար-
դարութիւնն յանդիման կացուցանէ,
զի՞նչ ասեմք․ միթէ անիրա՞ւ ինչ է
6 Աստուած որ ածէ զբարկութիւն․ Ըստ
մարդկութեան ասեմ․ քաւ լիցի․ ապա
թէ ոչ՝ զիա՞րդ դատի Աստուած զաշ-
7 խարհ։ Զի եթէ ճշմարտութիւնն Աս-
տուծոյ յիմում ստութեանն առաւե-
լաւ ի փառս նորա, զի՞ եւս ես իբրեւ
8 զմեղաւոր դատիմ։ Եւ կամ թէ որպէս
հայհոյիմքն, եւ որպէս ասեն ոմանք
զմէնջ ասել թէ Արասցուք զչար զի
եկեսցէ բարի․ որոց դատաստանքն յի-
րաւի են։
9 Եւ արդ ի՞ւ իւիք առաւել իցեմք․
ապաքէն եւ ոչ իւիք․ քանզի յառա-
ջագոյն իսկ մեղադիր եղեաք Հրէից
եւ հեթանոսաց, ամենեցուն ընդ մե-
10 ղօք լինելոյ։ Որպէս եւ գրեալ է թէ
11 Ոչ ոք է արդար եւ ոչ մի․ Եւ ոչ գոյ
որ իմանայ, եւ ոչ ոք է որ խնդրէ զԱս-
12 տուած։ Ամենեքեան խոտորեցան ի
միասին եւ անպիտանացան․ ոչ ոք է
որ առնէ զքաղցրութիւն, ոչ ոք է
13 մինչեւ ի մի։ Գերեզման բաց է կոկորդ
նոցա․ լեզուօք իւրեանց նենգաւորք
եղեն․ թոյնք իժից ի ներքոյ շրթանց
14 նոցա․ Որոց բերանք անիծիւք եւ դառ-
15 նութեամբ լի են։ Երագ են ոտք նոցա
16 հեղուլ զարիւն․ Բեկումն եւ թշուա-
17 ռութիւն ի ճանապարհս նոցա․ Եւ
զճանապարհն խաղաղութեան ոչ ծա-
18 նեան։ Ոչ է երկեւղ Աստուծոյ առաջի
աչաց նոցա։
19 ԲԴ․ Բայց գիտեմք, որ ինչ միանգամ
օրէնքն ասեն՝ այնոցիկ որ ընդ օրի-
նօքն են, ասեն․ զի ամենայն բերան
խցցի, եւ դատապարտ լիցի ամենայն
20 աշխարհ՝ Աստուծոյ։ Զի ի գործոց օ-
րինաց ոչ արդարասցի ամենայն մար-
մին առաջի նորա, քանզի օրինօքն է
գիտութիւն մեղաց։
21 Բայց արդ առանց օրինացն իսկ ար-
դարութիւնն Աստուծոյ յայտնեալ է՝
վկայեալ յօրինաց անտի եւ ի մարգա-
22 րէից։ Քանզի արդարութիւնն Աստու-
ծոյ ի հաւատոց անտի Յիսուսի Քրիս-
տոսի [1]յամենայն հաւատացեալս՝․ եւ
23 ոչինչ է խտիր։ Քանզի ամենեքեան մե-
ղան, եւ նուազեալ են ի փառաց անտի
24 Աստուծոյ։ Եւ արդարանան ձրի նորին
շնորհօք ի ձեռն փրկութեանն որ ի
25 Քրիստոս Յիսուս․ Զոր յառաջն եդ
Աստուած ի քաւութիւն ի ձեռն հաւա-
տոցն արեամբն նորա, ի հանդէս ար-
դարութեան նորա՝ վասն թողութեան
յառաջագոյն մեղացն գործելոց ի ներելն
26 Աստուծոյ, ի հանդէս արդարութեան

[1]Յլմն․, յամենեսին և ի վերայ ամենեցուն որ հաւատան

նորա ի ժամանակի յայսմիկ. զի եղիցի
նա արդար, եւ արդարացուցէ զայն
27 որ ի հաւատոցն Յիսուսի։ Իսկ արդ
ո՞ւր են պարծանքն. արգելան. յորո՞յ
օրինաց, ի գործո՞ց անտի. ոչ, այլ ի
28 հաւատոցն օրինաց։ Քանզի համարիմք
հաւատովք արդարանալ մարդոյ՝ ա-
29 ռանց գործոց օրինաց։ Եթէ Հրէի՞ց
միայն իցէ Աստուած եւ հեթանոսաց
30 ոչ. այո, եւ հեթանոսաց։ Զի եթէ
մի է Աստուած որ արդարացուցանէ
զթլփատութիւնն ի հաւատոց, ապա
եւ զանթլփատութիւնն նովին հաւա-
31 տովք։ Արդ զօրէնսն ինչ խափանե՞մք
հաւատովքս. քաւ լիցի. այլ զօրէնսն
հաստատեմք։

Գլ. Դ

1 ԲՁ. Իսկ արդ զի՞նչ ասիցեմք գտա-
նել Աբրահամու նահապետին մերոյ
2 ըստ մարմնոյ։ Զի եթէ Աբրահամու
գործովք էր արդարացեալ, ունել ու-
նէր պարծանս, այլ ոչ առ Աստուած։
3 Իսկ զի՞նչ ասիցէ գիր. Հաւատաց Աբ-
րահամ յԱստուած եւ համարեցաւ նմա
4 յարդարութիւն։ Բայց այնմ որ գոր-
ծիցէն, ոչ համարին վարձքն ըստ շնոր-
5 հաց՝ այլ ըստ պարտեաց։ Իսկ այնմ որ
ոչն գործիցէ, բայց հաւատայցէ յայն
որ արդարայուցանէ զամպարիշտս, հա-
մարին հաւատքն նորա յարդարութիւն։
6 Որպէս եւ Դաւիթ ասէ զերանութիւն
մարդոյ որում Աստուած համարի ար-
7 դարութիւն առանց գործոց։ Երանի
որոց թողան անօրէնութիւնք, եւ ո-
8 րոց ծածկեցան մեղք իւրեանց։ Երան-
եալ է այր որում ոչ համարեսցի Տէր
9 զմեղս նորա։ Արդ երանութիւնս այս ի
վերայ թլփատութեա՞ն է եթէ ի վերայ
անթլփատութեան. քանզի ասեմք ե-
թէ Համարեցաւ Աբրահամու հաւատքն
10 յարդարութիւն։ Արդ զիա՞րդ համա-
րեցան. մինչդեռ ի թլփատութեա՞ն էր՝
եթէ յանթլփատութեան. ոչ ի թլփա-
տութեանն, այլ յանթլփատութեան։
11 Եւ նշանակ առ զթլփատութիւնն,
կնիք արդարութեան հաւատոցն որ
յանթլփատութենէ անտի. զի եղիցի
նա հայր ամենայն հաւատացելոց որ
յանթլփատութենէ անտի իցեն, առ ի
համարելոյ եւ նոցա յարդարութիւն.
12 Եւ հայր թլփատութեան՝ որոց ոչ ի
թլփատութենէ անտի եւեթ, այլ եւ
որոց երթայցեն ընդ հետս անթլփա-
տութեան հաւատոց հօր մերոյ Աբրա-
համու։
13 ԳԴ. Զի ոչ եթէ օրինօքն են աւե-
տիքն Աբրահամու եւ զաւակի նորա
ժառանգ լինել աշխարհի, այլ ի հաւա-
14 տոցն արդարութենէ։ Զի եթէ որք յօ-
րինացն են՝ ժառանգք իցեն, ապա ընդ-
ունայն են հաւատքն, եւ դատարկ՝
15 աւետիքն։ Քանզի օրէնքն զբարկու-
թիւն գործեն. բայց ուր ոչ են օրէնք,
16 եւ ո՛չ յանցանք ինչ։ Վասն այնորիկ
ի հաւատոց անտի, զի ըստ շնորհացն
իցէ, առ ի լինելոյ հաստատուն աւետ-
եացն ամենայն զաւակին, ոչ այնմ
միայն որ յօրինացն անտի, այլ եւ այնմ՝
որ ի հաւատոցն Աբրահամու, որ է հայր
17 մեր ամենեցուն. Որպէս եւ գրեալ է
եթէ Հայր ազգաց բազմաց արարի
զքեզ, առաջի Աստուծոյ որում հաւա-
տաց [1]եթէ կենդանի առնէ զմեռեալս,
18 եւ կոչէ զչգոյսն իբրեւ զգոյս։ Որ յան-
յոյսն յուսով հաւատայ՝ լինել նմա հայր
ազգաց բազմաց. որպէս եւ ասացաւն
19 թէ Այնպէս եղիցի զաւակ քո։ Եւ նա
ոչ երկմտեաց ի հաւատոցն [2]թէպէտ
եւ հայեցաւ" ի մարմին իւր այնուհե-
տեւ իբրեւ ի մեռեալ, քանզի զհա-
րիւրամենիւք ուրեմն էր, եւ ի մեռե-
20 լութիւն արգանդին Սառայի։ Բայց
յաւետեացն Աստուծոյ ոչ երկմտեաց
անհաւատութեամբ, այլ զօրացաւ հա-
21 ւատովք, ետ փառս Աստուծոյ, Եւ
հաստատեցաւ ի միտս իւր եթէ որ
22 խոստացաւն՝ կարող է առնել։ Վասն
որոյ համարեցաւ նմա յարդարութիւն։
23 Արդ զի գրեցաւն ոչ թէ վասն նորա
24 միայն թէ համարեցաւ նմա. Այլ եւ
վասն [3]մերոյ համարելոց է, որք հա-
ւատամք յայն որ յարոյցն զՅիսուս,
25 զՏէր մեր, ի մեռելոց. Որ մատնեցաւ
վասն յանցանաց մերոց, եւ յարեաւ
վասն զմեզ արդարացուցանելոյ։

Գլ. Ե

1 Այսուհետեւ արդարացեալք ի հաւա-

[1] Ցօյնն, որ
[2] Օմանք, ոչ հայեցաւ
[3] Ցօյնն, մեր որոց

տոց անտի, խաղաղութիւն կալցուք
առ Աստուած ի ձեռն Տեառն մերոյ
2 Յիսուսի Քրիստոսի. Որով եւ զընծա-
յութիւնն իսկ ընկալաք հաւատովք ի
շնորհս յայսոսիկ յորում կամք եւ պար-
3 ծիմք յուսով փառացն Աստուծոյ։ Եւ
ոչ այսչափ միայն, այլ եւ պարծիմք
եւս ի նեղութիւնս մեր. քանզի գի-
տեմք եթէ նեղութիւնք զհամբերու-
4 թիւն գործեն, Համբերութիւն զհան-
5 դէս, հանդէս զյոյս. Յոյս ոչ երբեք
ամաչեցուցանէ. զի սէրն Աստուծոյ
սփռեալ է ի սիրտս մեր ի ձեռն Հոգ-
6 ւոյն Սրբոյ որ տուաւ մեզ։ Զի մինչ-
դեռ տկարքն էաք, Քրիստոս [1]վասն
մեր˝ ի ժամանակի ի վերայ ամպարշ-
7 տաց մեռաւ։ Զի վասն արդարոյ հա-
զիւ ոք թէ մեռանիցի, այլ վասն բար-
ւոյ թերեւս համարձակիցի ոք մեռա-
8 նել. [2]Յայտնեաց Աստուած զսէրն իւր
ի մեզ, զի մինչդեռ մեղաւորքն էաք,
9 Քրիստոս վասն մեր մեռաւ. Ո՛րչափ
եւս առաւել յարդարանալս մերում
այժմիկ արեամբն նորա՝ ապրեսցուք
10 նովաւ ի բարկութենէ անտի։ Զի եթէ
մինչ թշնամիքն էաք, հաշտեցաք ընդ
Աստուծոյ մահուամբ Որդւոյ նորա,
Ո՛րչափ եւս առաւել ի հաշտելս մերում
11 ապրեսցուք կենօքն նորա։ Եւ ոչ այս-
չափ միայն, այլ եւ պարծիմք եւս յԱս-
տուած ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի, որով եւ զհաշտութիւնն
իսկ ընկալաք։
12 ԳԶ. Զի որպէս ի միջոյ մարդոյ մեղք
յաշխարհ մտին եւ ի մեղաց անտի՝ մահ,
եւ այնպէս յամենայն մարդիկ տարա-
ծեցաւ մահ [3]որով ամենեքին մեղան։
13 Քանզի մինչեւ յօրէնսն մեղք էին յաշ-
խարհի, բայց մեղք ոչ համարին, ուր
14 օրէնք ոչ իցեն։ Այլ թագաւորեաց մահ
յԱդամայ մինչեւ ի Մովսէս եւ ի վերայ
չյանցուցելոցն ըստ նմանութեան յան-
ցուածոյն Ադամայ, որ է օրինակ հան-
15 դերձելոյն։ Այլ ոչ որպէս յանցանքն
նոյնպէս եւ շնորհքն. զի եթէ միոյն
յանցանօք բազումք մեռան, ո՛րչափ
եւս առաւել շնորհքն Աստուծոյ եւ
պարգեւք, շնորհօք միոյն մարդոյ Յի-
սուսի Քրիստոսի, ի բազումս առա-
16 ւելան։ Եւ ոչ որպէս ի միոջէ յանցու-
ցելոյն պարգեւքս. զի դատաստանն՝
ի միոջէ [4]յանցուածոյ անտի˝ ի դատա-
պարտութիւն, այլ շնորհքն՝ ի բազմաց
17 յանցուածոցն յարդարութիւն։ Զի եթէ
ի միոյն յանցանաց մահ թագաւորեաց
միովն, ո՛րչափ եւս առաւել, որք զա-
ռաւելութիւն շնորհաց եւ զպարգեւաց
արդարութեանն առնուցուն, կենօք
թագաւորեսցեն ի ձեռն միոյն Յիսու-
18 սի Քրիստոսի։ Ապա ուրեմն որպէս
միոյն յանցանօք յամենայն մարդիկ
դատապարտութիւն, նոյնպէս եւ միոյն
արդարութեամբն յամենայն մարդիկ
19 արդարութիւն կենաց։ Զի որպէս ան-
հնազանդութեամբ միոյն մարդոյ մե-
ղաւորք բազումք եղեն, նոյնպէս եւ
հնազանդութեամբ միոյն արդարք բա-
20 զումք եղիցին։ Բայց օրէնք ի ներքս
անկան, զի յանցանքն բազմասցին.
զի ուր առաւել եղեն մեղքն, առաւել
21 եւս յաւելան շնորհքն։ Զի որպէս թա-
գաւորեցին մեղքն ի մահու անդ, նոյն-
պէս եւ շնորհքն թագաւորեսցեն ար-
դարութեամբ ի կեանսն յաւիտենից ի
ձեռն Յիսուսի Քրիստոսի Տեառն մե-
րոյ։ ՎԶ

## ԳԼ. Զ

1 Իսկ արդ զի՞նչ ասիցեմք. յաճախեսս-
ցո՞ւք ի մեղսն զի շնորհքն բազմաս-
2 ցին։ Քաւ լիցի. որք մեռաք մեղացն՝
զիա՞րդ տակաւին՝ ի նմին կեցցեմք։
3 Եթէ ո՞չ գիտէք զի որ միանգամ մկըր-
տեցաք ի Քրիստոս Յիսուս՝ ի մահ
4 անդր նորա մկրտեցաք։ Թաղեցաք ընդ
նմին մկրտութեամբն ի մահ, զի որ-
պէս յարեաւ Քրիստոս ի մեռելոց փա-
ռօքն Հօր, նոյնպէս եւ մեք ի նորո-
5 գումն կենաց շրջեսցուք։ Զի եթէ
տնկակից եղեաք նմանութեան մահու
նորա, այլ եւ յարութեան նորա լինի-
6 ցիմք։ Զայս գիտասջիք զի հին մարդն
մեր խաչակից եղեւ նորա, զի խափա-
նեսցի մարմին մեղացն, մի՛ եւս ծա-
7 ռայել մեզ մեղացն։ Զի որ մեռանին՝
8 արդարացեալ է ի մեղաց անտի։ Իսկ
եթէ մեռաք ընդ Քրիստոսի, հաւա-
տամք թէ եւ կեցցուք ընդ նմա։

---

[1] Ի բազումս պակասէ
[2] Յոյնն, Բայց յայտնեաց
[3] Կամ, զի
[4] Ի Յունէն պակասէ

9 Գիտեմք եթէ Քրիստոս յարուցեալ է
ի մեռելոց, այսուհետեւ ոչ մեռանի,
10 եւ մահ նմա ոչ եւս տիրէ։ Զի որ մե-
ռաւն՝ մեղացն մեռաւ մի անգամ, եւ
որ կենդանին է՝ կենդանի է Աստուծոյ։
11 Նոյնպէս եւ դուք համարեսջիք զան-
ձինս մեռեալս մեղացն, եւ կենդանիս
Աստուծոյ ի Քրիստոս Յիսուս ի Տէր
մեր։
12 ԴԿ. Մի՛ այսուհետեւ թագաւորես-
ցեն մեղք ի մահկանացու մարմինս ձեր՝
13 հնազանդել ցանկութեանց նորա. Եւ
մի՛ պատրաստէք զանդամս ձեր զէն
անիրաւութեան՝ մեղացն, այլ պատ-
րաստեցէք զանձինս ձեր Աստուծոյ,
որպէս ի մեռելոց ի կենդանիս, եւ
զանդամս ձեր՝ զէն արդարութեանն
14 Աստուծոյ։ Զի մեղք ձեզ ոչ տիրես-
ցեն. քանզի ոչ էք ընդ օրինօք, այլ
ընդ շնորհօք։
15 Իսկ արդ զի՞րդ. մեղիցո՞ւք զի
չեմք ընդ օրինօք, այլ ընդ շնորհօք.
16 քաւ լիցի։ Ո՞չ գիտէք թէ որում
պատրաստէք զանձինս ձեր ծառայս ի
հնազանդութիւն՝ ծառայ էք որում
հնազանդիքն. եթէ մեղաց՝ մահու, եւ
եթէ ի հնազանդութիւն՝ արդարու-
17 թեան։ Այլ շնո՛րհք Աստուծոյ. զի էիք
ծառայք մեղաց, հնազանդեցարուք ի
սրտէ որում աւանդեցայք յառակ վար-
18 դապետութեան։ Արդ ազատեալք ի
մեղաց՝ ծառայեցէք արդարութեան։
19 Մարդկօրէն ասեմ վասն տկարութեան
մարմնոյ ձերոյ. զի որպէս պատրաս-
տեցէք զանդամս ձեր ծառայս պղծու-
թեան եւ անօրէնութեան յանօրէնու-
թիւն, նոյնպէս եւ այժմ պատրաստե-
ցէք զանդամս ձեր ծառայս արդարու-
20 թեան ի սրբութիւն։ Զի մինչ ծա-
ռայքն էիք մեղաց, ազատացեալք էիք
21 յարդարութենէն։ Իսկ արդ զի՞նչ
պտուղ ունէիք յայնժամ, որովք այժմդ
զամօթի հարեալ էք. զի վախճան նո-
22 ցա մահ է։ Բայց արդ ազատացեալք
ի մեղացն եւ ծառայեալք Աստուծոյ,
ունիք զպտուղ ձեր ի սրբութիւն, եւ
23 վախճան նորա կեանք յաւիտենից։ Զի
թոշակն մեղաց մահ է, այլ շնորհքն
Աստուծոյ կեանք յաւիտենից ի Քրիս-
տոս Յիսուս ի Տէր մեր։

## ԳԼ. Է

1 ԴԴ. Եթէ ո՞չ գիտէք, եղբարք, (զի
ընդ գիտունս օրինացն խօսիմ,) զի օ-
րէնք տիրեն մարդոյ որչափ ժամանակս
2 կենդանի իցէ։ Քանզի կին առնակին
ի կենդանի այր իւր կապեալ կայ օրի-
նօք. իսկ եթէ մեռանիցի այրն, ար-
3 ձակեալ է յօրինաց առնն։ Ապա ու-
րեմն մինչ կենդանի է այրն, շուն կո-
չի, եթէ լինիցի առն այլում. եւ եթէ
մեռանիցի այրն, ազատ է յօրինացն,
չհամարեալ շուն՝ եթէ լինիցի առն այ-
4 լում։ Այսուհետեւ եւ դուք, եղբարք,
մեռարուք օրինացն մարմնովն Քրիս-
տոսի, լինել այլում որ ի մեռելոցն յա-
րուցեալ է, զի պտղաբերք լիցուք Աս-
5 տուծոյ. Քանզի մինչ էաքն մարմնով,
կարիք մեղաց որ օրինօքն էին՝ զօրա-
նային յանդամս մեր, առ ի պտղաբերս
6 առնելոյ զմեզ մահու։ Բայց այժմ զա-
տարկացաք յօրինաց անտի. քանզի
մեռաք այնմիկ որով ըմբռնեալն էաք՝
առ ի ծառայել մեզ նորոգութեամբ
Հոգւոյն եւ ոչ հնութեամբ գրոյն։
7 Իսկ արդ զի՞նչ ասեմք. օրէնքն
մե՞ղք իցեն. քաւ լիցի. այլ զմեղս ոչ
գիտէի, եթէ ոչ օրինօքն. եւ զցան-
կութիւն ոչ ճանաչէի, եթէ ոչ օրի-
նացն էր ասացեալ, Մի՛ ցանկանայ-
8 ցես։ Պատճառս առին մեղքն պատ-
ուիրանաւն, եւ գործեցին յիս զամե-
նայն ցանկութիւն. զի առանց օրի-
9 նաց մեղքն մեռեալ էին։ Եւ ես առանց
օրինացն երբեմն էի կենդանի, այլ
իբրեւ եհաս յիս պատուիրանն, մեղքն
10 կենդանացան, Եւ ես մեռայ. եւ գտաւ
ինձ պատուիրանն որ ի կեանս էր,
11 նոյն ի մահ։ Զի մեղացն պատճառս առ-
եալ պատուիրանաւն՝ խաբեցին զիս,
եւ նովին սպանին։
12 ԴԶ. Այսուհետեւ օրէնքն սուրբ են,
եւ պատուիրանն սուրբ եւ արդար
եւ բարերար։
13 Իսկ արդ ինձ բարի՞ն մահ եղեւ.
քաւ լիցի. այլ մեղքն, զի երեւեսցին
մեղքն բարեաւն գործել ինձ զմահ, զի
եղիցին ըստ առաւելութեան մեղքն
14 մեղաւոր ի ձեռն պատուիրանին։ Գի-
տեմք զի օրէնքն հոգեւոր են, այլ ես
մարմնաւոր եմ՝ ընդ մեղօք վաճառեալ։

15 Զի զոր գործեմն ոչ գիտեմ, ոչ եթէ
զոր կամիմն զայն առնեմ, այլ զոր
16 ատեամն՝ զայն գործեմ։ Ապա թէ զոր
ոչն կամիմ՝ զայն առնեմ, վկայեմ օ-
17 րինացն եթէ բարւոք են։ Այլ արդ՝
ոչ եթէ ես գործեմ զայն, այլ բնակեալ
18 յիս մեղքն։ Գիտեմ զի ոչ բնակեալ է
յիս, այսինքն է ի մարմնի իմում, բարի
ինչ. զի կամքն առաջի կան ինձ, եւ
19 առնել զբարին՝ ոչ։ Զի ոչ եթէ զոր
կամիմ զբարին առնեմ, այլ զոր ոչն
20 կամիմ զչարն՝ զայն գործեմ։ Ապա եթէ
զոր ոչն կամիմ՝ զայն առնեմ, ոչ եւս ես
առնեմ զայն՝ այլ բնակեալ յիս մեղքն։
21 [1]Եւ արդ՝ գտանեմ զօրէնս այնուրիկ՝
որ կամիցին առնել յիս զբարին. եւ
22 ինձ" չարն առաջի կայ։ Հաճեալ եմ
ընդ օրէնսն Աստուծոյ ըստ ներքին
23 մարդոյն. Բայց տեսանեմ այլ օրէնս
յանդամս իմ, զինեալ հակառակ օրի-
նաց մտաց իմոց, եւ գերեալ զիս օրի-
24 նօքն մեղաց՝ որ են յանդամս իմ։ Այր
մի տառապեալ եմ ես. ո՞վ ապրեցուս-
25 ցէ զիս ի մարմնոյ աստի մահու։ Այլ
շնո՛րհք Աստուծոյ ի ձեռն Յիսուսի
Քրիստոսի Տեառն մերոյ։

ԵԿ. Ապա ուրեմն ես ինքնին մտօք իմովք ծառայեմ օրինացն Աստուծոյ, եւ մարմնով՝ օրինացն մեղաց։

## ԳԼ. Ը

1 Թէ այդպէս իցէ, ոչինչ դատապար-
տութիւն է այնոցիկ որ ի Քրիստոս
2 [2]Յիսուս։ Զի օրէնք հոգւոյն կենաց
ի Քրիստոս Յիսուս ազատեցին զիս
3 յօրինաց մեղացն եւ մահու։ Զի որ
անհնարինն էր օրինացն [3]որով տկա-
րանայրն" մարմնով, Աստուած զՈրդին
իւր առաքեաց ի նմանութիւն մարմնոյ
մեղաց, եւ վասն մեղաց, եւ դատա-
4 պարտեաց զմեղս ի մարմնի անդ. Զի
արդարութիւն օրինացն կատարեսցի
ի մեզ, որք ոչ ըստ մարմնոյ գնայցեմք,
5 այլ՝ ըստ հոգւոյն։ Զի որք ըստ մարմ-
նոյն են՝ զմարմնոյն խորհին, եւ որք
6 ըստ հոգւոյն՝ զհոգւոյն։ Զի խորհուրդ
մարմնոյ մահ է, եւ խորհուրդ հոգւոյն՝
7 կեանք եւ խաղաղութիւն։ Քանզի
խորհուրդ մարմնոյ թշնամութիւն է
յԱստուած, զի օրինացն Աստուծոյ ոչ
8 հնազանդի. նա եւ կարէ իսկ ոչ։ Զի
որ մարմնովն են՝ Աստուծոյ հաճոյ լինել
9 ոչ կարեն։ Բայց դուք ոչ էք մարմնով,
այլ՝ հոգւով, եթէ իցէ Հոգին Աստու-
ծոյ ի ձեզ բնակեալ. ապա եթէ ոք
զՀոգին Քրիստոսի ոչ ունի, նա չէ
10 նորա։ Իսկ եթէ Քրիստոս ի ձեզ է,
ապա մարմին մեռեալ է վասն մեղաց.
եւ հոգին կենդանի է վասն արդարու-
11 թեան։ Եթէ Հոգի այնորիկ որ յարոյց
զՅիսուս ի մեռելոց՝ բնակեալ է ի ձեզ,
ապա եւ որ յարոյցն զՔրիստոս ի մե-
ռելոց՝ կենդանացուսցէ զմահկանացու
մարմինս ձեր բնակեալ Հոգւովն իւ-
րով ի ձեզ։ ՎՋ
12 Այսուհետեւ, եղբարք, պարտապան
եմք ոչ մարմնոյ ըստ մարմնոյ կեալ։
13 Զի թէ ըստ մարմնոյ [4]կեցէք, մեռա-
նելոց էք. իսկ եթէ Հոգւով զգործս
14 մարմնոյ սպանանիցէք, կեցջիք։ Զի
որ Հոգւովն Աստուծոյ վարին, նոքա
15 են որդիք Աստուծոյ։ Զի ոչ առէք
զհոգին ծառայութեան միւսանգամ
յերկեւղ, այլ առէք զհոգին որդեգրու-
թեան, որով աղաղակեմք՝ Աբբա Հայր։
16 Նոյն ինքն Հոգին վկայէ հոգւոյս մե-
17 րում, եթէ եմք որդիք Աստուծոյ։ Եւ
եթէ որդիք, ապա եւ ժառանգք. ժա-
ռանգք Աստուծոյ, եւ ժառանգակիցք
Քրիստոսի. եթէ չարչարանացն կցորդ
լինիմք, եւ փառացն հաղորդ լինելոց
եմք։
18 Ինձ այսպէս թուի եթէ ոչ են ար-
ժանի չարչարանք ժամանակիս հան-
դերձելոց փառացն որ յայտնելոց են
19 ի մեզ։ Զի ակնկալութիւն արարա-
ծոց յայտնութեան որդւոցն Աստուծոյ
20 սպասէ։ Զի ընդունայնութեան արա-
րածքն հնազանդեցան, ոչ իւրեանց
կամաւ, այլ վասն այնորիկ որ հնա-
21 զանդեցոյցն յուսով, Զի եւ ինքեանք
իսկ արարածքն ազատեսցին ի ծառա-
յութենէ ապականութեան յազատու-
թիւն փառաց որդւոցն Աստուծոյ։
22 Քանզի գիտեմք եթէ ամենայն արա-
րածք հեծեն եւ երկնեն մինչեւ ցայժմ։

[1]Ցոյնն, Եւ արդ գտանեմ զօրէնս, զի յորժամ կամիմ առնել զբարին, ինձ
[2]Ոմանք, Յիսուս, որ ոչ գնան ըստ մարմնոյ, այլ ըստ Հոգւոյ
[3]Կամ, զի տկարանայր
[4]Ցոյնն, կեայք

23 Եւ ոչ այսչափ միայն, այլ եւ մեք իսկ
որ զպտուղ Հոգւոյն ունիմք՝ անձամբ
յանձինս մեր հեծեմք, որդեգրութեանն
ակն կալեալ՝ փրկութեան մարմնոյ մե-
24 րոյ։ Զի յուսով ապրեցաք. այլ յոյս
տեսանելի չէ յոյս. զի զոր տեսանէ
25 ոք՝ զի՞ եւս յուսայ։ Ապա եթէ զոր
ոչն տեսանեմք՝ յուսամք, համբերու-
26 թեամբ ակն ունիմք։ Նոյնպէս եւ
Հոգին ի թիկունս հասանէ տկարու-
թեանս մերում. զի զոր կամքն յա-
ղօթս՝ որպէս արժան իցէ ոչ գիտեմք.
այլ ինքնին Հոգին բարեխօս լինի ի
27 հեծութիւնս անմռունչս։ Բայց որ
քննէն զսիրտս՝ գիտէ զինչ խորհուրդ
է Հոգւոյն, զի ըստ Աստուծոյ բարե-
խօսէ վասն սրբոց։
28 Բայց գիտեմք եթէ որոց սիրեն զԱս-
տուած՝ ¹յամենայնի գործակից լինի
ի բարիս՝ որք հրաւիրանաւն կոչեցան։
29 Զի զորս յառաջն ճանաչէր՝ յառաջա-
գոյն եւ հրաւիրեաց կերպարանակից
լինել պատկերի Որդւոյն իւրոյ. զի
եղիցի նա անդրանիկ ի մէջ եղբարց
30 բազմաց։ Եւ զորս յառաջագոյնն հրա-
ւիրեաց՝ զնոսին եւ կոչեաց. եւ զորս
կոչեացն՝ զնոսին եւ արդարացոյց. եւ
զորս արդարացոյցն՝ զնոսին եւ փա-
31 ռաւորս արար։ Իսկ արդ զի՞նչ ասեմք
առ այս. եթէ Աստուած ի մեր կոյս
32 է, ո՞վ իցէ մեր հակառակ։ Որ յիւր
Որդին ոչ խնայեաց, այլ վասն մեր ա-
մենեցուն մատնեաց զնա, զիա՞րդ ոչ
նովաւ հանդերձ զամենայն շնորհիցէ
33 մեզ։ Ո՞վ իցէ որ մեղադիր լինիցի ընտ-
րելոց Աստուծոյ. Աստուած է որ ար-
34 դարացուցանէ։ Իսկ արդ ո՞վ է որ
դատապարտ առնիցէ. Քրիստոս Յի-
սուս՝ որ մեռաւն, մանաւանդ թէ յա-
րուցեալ իսկ է, եւ է ընդ աջմէ Աս-
տուծոյ, որ եւ բարեխօս իսկ է վասն
35 մեր։ Արդ ո՞վ մեկնեսցէ զմեզ ի սի-
րոյն Քրիստոսի. նեղութի՞ւն, թէ
անձկութի՞ւն, թէ հալածա՞նք, թէ սո՞վ,
թէ մերկութի՞ւն, թէ վի՞շտք, թէ
36 սո՞ւր. Որպէս եւ գրեալ է, Վասն քո
մեռանիմք զօրհանապազ, համարեցաք
37 իբրեւ զոչխար ի սպանդ։ Այլ յայսմ
ամենայնի առաւել յաղթեմք նովաւ
38 որ սիրեացն զմեզ։ Քանզի հաստատեալ
եմ եթէ ոչ մահ եւ ոչ կեանք եւ ոչ
հրեշտակք եւ ոչ իշխանութիւնք, եւ
ոչ որ կանս եւ ոչ հանդերձեալքն, եւ
39 ոչ զօրութիւնք, Եւ ոչ բարձրութիւն
եւ ոչ խորութիւն, եւ ոչ այլ ինչ արա-
րած կարէ մեկնել զմեզ ի սիրոյ անտի
Աստուծոյ, որ ի Քրիստոս Յիսուս ի
Տէր մեր։

## Գլ. Թ

1 ԵԴ. Ստուգութեամբ ասեմ ի Քրիս-
տոս եւ ոչ ստեմ, վկայեն ինձ միտք
2 իմ ի Հոգի Սուրբ, Զի տրտմութիւն
է ինձ յոյժ եւ անպակաս ցաւք սրտի
3 իմոյ։ Զի ուխտիւք խնդրէի ես իսկ
ինքնին նզով լինել ի Քրիստոսէ վասն
եղբարց իմոց եւ ազգականաց ըստ
4 մարմնոյ, Որ են Իսրայելացիք. որոց
որդեգրութիւնն եւ փառքն եւ կտա-
կարանքն եւ օրէնսդրութիւնն եւ պաշ-
5 տօնն եւ աւետիքն. Որոց հարքն, յո-
րոց եւ Քրիստոս ըստ մարմնոյ, որ է
ի վերայ ամենեցուն Աստուած օրհնեալ
6 յաւիտեանս։ Ամէն։ Ոչ ինչ է մարթ
եթէ անկած լինիցի բանն Աստուծոյ.
զի ոչ ամենեքեան որ յԻսրայելէն են,
7 նոքա Իսրայելեանք իցեն. Եւ ոչ որ
զաւակն Աբրահամու են՝ ամենեքեան
որդիք իցեն. այլ Իսահակաւ կոչեսցի
8 քեզ զաւակ։ Այսինքն թէ ոչ որ որդիք
մարմնոյն են՝ են որդիք Աստուծոյ, այլ՝
որդիք աւետեացն համարին ի զաւակ։
9 Քանզի աւետեաց իսկ է բանս այս, թէ
Ի ժամանակի յայսմիկ եկից, եւ եղիցի
10 որդի Սառայի։ Եւ ոչ այնչափ միայն՝
այլ ի Հռեբեկայ, ի միոջէ անկողնոյ Ի-
11 սահակայ հօր մերոյ։ Զի մինչչեւ ծնեալ
էին, եւ մինչչեւ բարի ինչ կամ չար
գործեալ էր, (զի ըստ ընտրութեանն
յառաջադրութիւնն Աստուծոյ հաստա-
12 տեսցի, Ոչ ի գործոց, այլ յայնմանէ որ
13 կոչեացն,) ասացաւ նմա թէ, Երէցն
կրտսերոյն ծառայեսցէ. որպէս եւ
գրեալ է թէ, ԶՅակոբ սիրեցի, եւ
զԵսաւ ատեցի։
14 Իսկ արդ զի՞նչ ասեմք. միթէ անի-
րաւութի՞ւն իցէ յԱստուծոյ. քաւ լիցի։
15 Զի Մովսիսի ասէ, Ողորմեցայց որում
ողորմեցայցն, եւ գթացայց յոր գթա-
16 ցայցն։ Ապա ոչ ըստ այնմ ինչ է որ
կամիցին, եւ ոչ ըստ այնմ՝ որ ընթա-

¹Ոմանք, ամենայն ինչ

նայցէ, այլ՝ ըստ Աստուծոյ որ ողորմի։
17 ԵԶ. Քանզի ասէ գիր ցՓարաւոն թէ,
Վասն այնորիկ գրգռեցի զքեզ, զի ի
քեզ ցուցից զզօրութիւն իմ, եւ պատ-
մեսցի անուն իմ ընդ ամենայն երկիր։
18 Ապա ուրեմն ում կամի ողորմի, եւ
19 [1]ում կամի խստանայ"։ Իսկ արդ ա-
սիցես թէ, Մեղ եւս զի՞ դնէ, զի կա-
20 մաց նորա [2]ոչ ոք կայ" հակառակ։ Իսկ
արդ դու ո՞վ ես, մարդ, որ [3]պատաս-
խանի տաս Աստուծոյ. միթէ ասիցէ
ստեղծուածն ցստեղծիչն թէ Ընդէ՞ր
21 այդպէս արարեր զիս։ Եթէ ո՞չ ունի-
ցի իշխանութիւն բրուտն կաւոյն, ի
նմին զանգուածոյ առնել անօթ՝ զոմն
22 ի պատիւ եւ զոմն յանարգանս։ Ապա
եթէ կամէր Աստուած ցուցանել զբար-
կութիւն, եւ յայտնի առնել զզօրու-
թիւն իւր, [4]զոր համբերն" բազում
երկայնմտութեամբ անօթոցն բարկու-
23 թեան՝ պատրաստելոցն ի կորուստ. Զի
յայտնի արասցէ զմեծութիւն փառաց
իւրոց ի վերայ անօթոցն ողորմու-
թեան, զոր [5]պատրաստեաց ի փառս։
24 Զորս եւ կոչեաց զմեզ, ոչ միայն ի
25 Հրէից, այլ եւ ի հեթանոսաց։ Որպէս
եւ յՈվսէէ ասէ, Կոչեցից զոր ոչ ժո-
ղովուրդն իմ՝ ժողովուրդ իմ, եւ
26 զչսիրեցեալն՝ սիրեցեալ։ Եւ եղիցի ի
տեղւոջ յորում ասացաւ նոցա թէ,
Ոչ ժողովուրդ իմ դուք, անդ կոչես-
ցին նոքա որդիք Աստուծոյ կենդանւոյ։
27 Եսայի աղաղակէ վասն Իսրայելի, Եթէ
իցէ թիւ որդւոցն Իսրայելի իբրեւ զա-
ւազ ծովու՝ [6]սակաւ ինչ մնացորդք
28 մնասցեն"։ Զի բան մի հակիրճ եւ հա-
մառօտ արդարութեամբ, զբանն հա-
կիրճ արասցէ Տէր ի վերայ երկրի։
29 Եւ որպէս ասէ Եսայի, Եթէ ոչ Տեառն
զօրութեանց թողեալ էր մեզ զաւակ,
իբրեւ զՍոդոմ լինէաք եւ Գոմորայ
նմանէաք։
30 ԶԿ. Իսկ արդ զի՞նչ ասիցեմք. զի հե-
թանոսք որ ոչ երթային զհետ արդա-
րութեան՝ հասին արդարութեան, այնմ
արդարութեան՝ որ ի հաւատոց անտի.
31 Այլ Իսրայէլ երթայր զհետ օրինացն
արդարութեան, եւ յօրէնս արդարու-
32 թեանն ոչ ժամանեաց։ Ընդէ՞ր. զի ոչ
ի հաւատոց այլ իբրեւ ի գործոց օրի-
նաց. քանզի գթեցին նոքա առ վիմին
33 գայթակղութեան. Որպէս եւ գրեալ է,
Ահաւասիկ դնեմ ի Սիովն քար գայ-
թակղութեան եւ վէմ գլորման, եւ
ամենայն որ հաւատասցէ ի նա մի՛ ա-
մաչեսցէ։

## Գլ. Ժ

1 Եղբարք, իմ կամք սրտի եւ աղօթք
առ Աստուած վասն [7]նոցա են ի փրկու-
2 թիւն։ Քանզի վկայեմ նոցա՝ թէ զնա-
խանձ Աստուծոյ ունին, այլ՝ ոչ գի-
3 տութեամբ։ Զի տգէտ են Աստուծոյ
արդարութեանն, եւ զիւրեանցն խնդ-
րեն կացուցանել, զի արդարութեանն
4 Աստուծոյ ոչ հնազանդեցան։ Քանզի
կատարած օրինացն Քրիստոս է յար-
դարութիւն ամենայն հաւատացելոց։
5 ԶԴ. Մովսէս գրէ զարդարութիւնն
որ յօրինաց անտի է, Եթէ արասցէ
6 զայն մարդ, կեցցէ նովին։ Իսկ զհա-
ւատոցն արդարութենէ այսպէս ասէ,
Մի՛ ասիցես ի սրտի քում, Ո՞վ ելա-
նիցէ յերկինս, այսինքն է զՔրիստոս
7 իջուցանել. Կամ, Ո՞վ իջանիցէ յան-
դունդս, այսինքն է զՔրիստոս հանել
8 ի մեռելոց։ Այլ զի՞նչ ասէ [8]գիր. Մերձ
է [9]բանն, ի բերան քո եւ ի սրտի քում
է, այսինքն է բանն հաւատոց զոր քա-
9 րոզեմք։ Զի եթէ խոստովանեսցես բե-
րանով քով Տէր զՅիսուս, եւ հաւա-
տասցես ի սրտի քում թէ Աստուած
10 յարոյց զնա ի մեռելոց, կեցցես։ Զի
սրտիւ հաւատայք յարդարութիւն, եւ
բերանով խոստովանիք ի փրկութիւն։
11 Քանզի ասէ գիր, Ամենայն որ հաւա-
12 տասցէ ի նա՝ մի՛ ամաչեսցէ։ Զի ոչ
գոյ խտիր Հրէի եւ հեթանոսի. քանզի
նոյն Տէր է ամենեցուն, բաւական յա-
13 մենեսին որք կարդան առ նա. Զի ա-
մենայն որ կարդասցէ զանուն Տեառն՝
կեցցէ։
14 Իսկ զիա՞րդ կարդասցեն յոր ոչն հա-
ւատացին. կամ զիա՞րդ հաւատասցեն

[1] Յոյնն, զոր կամի խստացուցանէ
[2] Յոյնն, ո՞ եկաց
[3] Յոյնն, Հակառակ պատասխանի
[4] Յոյնն, Համբեր
[5] Յոյնն, յառաջագոյն պատրաստեաց
[6] Յոյնն, մնացորդն ապրեսցի

[7] Ոմանք, Իսրայելի
[8] Յոմանս պակասի
[9] Ոմանք, բանն առ քեզ

որում ոչն լուան․ կամ զիա՞րդ լուի-
15 ցեն առանց ուրուք քարոզելոյ․ կամ
զիա՞րդ քարոզեսցեն, եթէ ոչ առաքես-
ցին․ որպէս եւ գրեալ է, Իբրեւ զի՜
գեղեցիկ են ոտք աւետարանչացն խա-
ղաղութեան եւ աւետարանչացն բա-
16 րութեան։ Այլ ոչ ամենեքեան հնա-
զանդ եղեն աւետարանին․ Եսայի ա-
ղաղակէ, Տէր, ո՞ հաւատաց լրոյ մե-
17 րում։ Ապա ուրեմն հաւատք ի լսելոյ
են, եւ լուր ի բանէն [1]Քրիստոսի։ ՎԶ
18 Այլ ասեմ, Միթէ ո՞չ լուան․ մա-
նաւանդ զի Ընդ ամենայն երկիր ել
բարբառ նոցա, եւ ընդ ծագս տիեզե-
19 րաց՝ խօսք նոցա։ Այլ ասեմ, Միթէ
Իսրայէլ ո՞չ գիտաց․ նախ Մովսէս ասէ,
Ես նախանձեցուցից զձեզ ոչինչ ժո-
ղովրդեամբ, եւ ազգաւ անմտաւ զկծե-
20 ցուցից զձեզ։ Բայց Եսայի համարձակի
իսկ եւ ասէ, Գտայ այնոցիկ որ զիս
ոչ խնդրէին, յայտնի եղէ այնոցիկ որ
21 զինէն ոչ հարցանէին։ Այլ առ Իսրա-
յէլ ասէ, Զօր ամենայն ձգեցի զձեռս
իմ առ ժողովուրդ անհաւան եւ հա-
կառակող։

ԳԼ․ ԺԱ

1 ՋՁ․ Իսկ արդ ասեմ, Միթէ մերժեա՞ց
Աստուած զժողովուրդ իւր․ քաւ լիցի․
քանզի եւ ես Իսրայելացի եմ, ի զա-
ւակէ Աբրահամու, յազգէ Բենիամենի։
2 Ոչ մերժեաց Աստուած զժողովուրդ
իւր զոր յառաջն ծանեաւ․ թէ ո՞չ գի-
տէք յԵղիա զի՛նչ ասէ գիր, ո՛րպէս
ամբաստան լինի Աստուծոյ զԻսրայելէ,
3 Տէր, զմարգարէս քո կոտորեցին եւ
զսեղանս քո կործանեցին․ ես մնացի
4 միայն, եւ խնդրեն զանձն իմ։ Այլ
զի՞նչ ասէ նմա պատասխանին․ Թողի
ինձ, ասէ, եւթն հազար այր, որ ոչ
5 կրկնեցին ծունր Բահաղու։ Նոյնպէս
եւ յայսմ ժամանակի մնացորդք ըստ
6 ընտրութեան շնորհացն եղեն։ Իսկ
եթէ շնորհօք, ոչ եւս ի գործոց․ ապա
թէ ոչ՝ շնորհքն ոչ եւս շնորհք լինին։[2]
7 Իսկ արդ զոր խնդրէրն Իսրայէլ, այնմ
ոչ եհաս․ բայց ընտրութիւնն եհաս,
8 եւ այլքն կուրացան, (Որպէս գրեալ է,
Ետ նոցա Աստուած հոգի յիմարու-
թեան, աչս՝ որովք ոչ տեսանիցեն, եւ
ականջս՝ որովք ոչ լսիցեն,) մինչեւ
9 ցայսօր ժամանակի։ Եւ Դաւիթ ասէ,
Եղիցին սեղանք նոցա յորոգայթ եւ
յորս եւ ի գայթակղութիւն եւ ի հա-
10 տուցումն նոցին։ Խաւարեսցին աչք
նոցա զի մի՛ տեսցեն, եւ զթիկունս
11 նոցա հանապազ կորացո։ Իսկ արդ
ասեմ, Միթէ վասն այնորի՞կ յանցեան
զի կործանեսցին․ քաւ լիցի․ այլ նոցա
յանցանօքն փրկութիւն հեթանոսաց,
12 զի նախանձ արկցէ նոցա։ Իսկ եթէ
յանցանքն նոցա մեծութիւն աշխարհի,
եւ պարտութիւն նոցա մեծութիւն հե-
թանոսաց, ո՛րչափ եւս առաւել լրու-
թիւն նոցա։
13 ՒԿ․ Այլ ձեզ ասեմ հեթանոսաց, ցոր-
քան ժամանակս իցեմ հեթանոսաց ա-
ռաքեալ, զպաշտօնն իմ փառաւոր ա-
14 նեմ, Զի թերեւս [3]նախանձ արկից
նոցա մարմնով իմով՝ եւ ապրեցուցից
15 զոմանս ի նոցանէ։ Զի եթէ մերժումն
նոցա հաշտութիւն աշխարհի է, իսկ
ընդունելութիւնն զի՞նչ իցէ, եթէ ոչ՝
16 կենդանութիւն ի մեռելոց։ Իսկ եթէ
սկիզբն սուրբ է, եւ զանգուածն․ եւ
17 եթէ արմատն՝ ապա եւ ոստքն։ Եթէ
յոստոց անտի ոմանք փշրեցան, եւ դու
որ ձիթենիդ վայրենի էիր՝ պատուաս-
տեցար ի նոսա, եւ բաժանորդ եղեր
արմատոյն եւ պարարտութեան ձի-
18 թենւոյն, Մի՛ պարծիր առ ոստովքն․
ապա եթէ պարծիցիս, ոչ եթէ դու
զարմատն ի վեր ունիս, այլ՝ արմատն
19 զքեզ։ Իսկ արդ ասիցես, Ոստքն փշ-
20 րեցան, զի ես պատուաստեցայց։ Բար-
ւոք է, անհաւատութեամբն փշրեցան,
եւ դու հաւատովք հաստատեցար․ մի՛
21 հպարտանար, այլ երկիր։ Զի եթէ Աս-
տուած ի բուն ոստոյն ոչ խնայեաց,
դուցէ երբեք եւ ի քեզ ոչ խնայեսցէ։
22 Արդ տես զքաղցրութիւն եւ զսաստ-
կութիւնն Աստուծոյ․ ի վերայ կործա-
նելոցն՝ սաստկութիւն, եւ ի վերայ քո՝
քաղցրութիւն [4]Աստուծոյ, եթէ կայ-
ցես ի նմին քաղցրութեան․ ապա թէ
23 ոչ՝ եւ դու կոտորեսցիս։ Եւ նոքա

[1] Ոմանք, Աստուծոյ
[2] Ոմանք յաւելուն, Իսկ եթէ ի գործոց, ոչ եւս են շնորհք․ ապա թէ ոչ՝ գործն ոչ եւս գործ լինի։
[3] Յոյնն, Նախանձեցուցից զմարմին իմ
[4] Յոմանս պակասի

եթէ ոչ ի նմին անհաւատութեանն
կայցեն, պատուաստեսցին. զի կարող է
Աստուած միւսանգամ պատուաստել
24 զնոսա։ Զի եթէ դու ի բուն ի վայրենի
ձիթենւոյ անտի հատար, և յանբուն
քո ի բարի ձիթենւոջն պատուաստե-
ցար, ո՛րչափ ևս առաւել նոքա որ
բունքն իսկ են՝ պատուաստեսցին յիւր-
եանց ձիթենւոջն։
25 ԿԲ. Ոչ կամիմ, եղբարք, եթէ տգէտք
իցէք խորհրդոյս այսմիկ, զի մի՛ յան-
ձինս ձեր իցէք իմաստունք. զի կու-
րութիւն փոքր ի շատէ եղև Իսրա-
յէլի, մինչև լրումն հեթանոսաց մտցէ,
26 Եւ ապա ամենայն Իսրայէլ կեցցէ.
որպէս և գրեալ է, Եկեսցէ ի Սիովնէ
Փրկիչ, և դարձուսցէ զամպարշտու-
27 թիւնս ի Յակոբայ։ Եւ այս նոցա
որ յինէն ուխտ, յորժամ բարձից զմեղս
28 նոցա։ Ըստ աւետարանիս թշնամիք
են վասն ձեր, ըստ ընտրութեանն սի-
29 րելիք վասն հարցն։ Քանզի անզեղջ
են շնորհքն և կոչումն Աստուծոյ։
30 Զի որպէս և դուք երբեմն ապստամբք
էիք յԱստուծոյ, և արդ ողորմութիւն
գտէք առ նոցա ապստամբութեամբն,
31 Նոյնպէս և նոքա այժմ ապստամբք
[1]եղեն առ ձերով ողորմութեամբդ, զի
32 և՛ նոքա ողորմութիւն գտցեն։ Քան-
զի արգել Աստուած զամենեսին յան-
հաւանութիւն, զի ամենեցուն ողոր-
մեսցի։
33 Ո՛վ խորք մեծութեան և իմաստու-
թեան և գիտութեանն Աստուծոյ,
ո՛րպէս առանց քննելոյ են դատաս-
տանք նորա, և առանց գննելոյ են
34 ճանապարհք նորա։ Զի ո՞վ գիտաց
զմիտս Տեառն, կամ ո՞վ խորհրդակից
35 եղև նմա. կամ ո՞վ ետ նմա փոխ,
36 և տնտուցու փոխարէն ի նմանէ։ Զի
ի նմանէ և նովաւ և ի նոյն ամենայն.
նմա փառք յաւիտեանս։ Ամէն։

ԳԼ. ԺԲ

1 Աղաչեմ զձեզ, եղբարք, գթու-
թեամբքն Աստուծոյ՝ պատրաստել
զմարմինս ձեր պատարագ կենդանի,
սուրբ, հաճոյ Աստուծոյ, զխօսուն
2 պաշտօնդ ձեր. Եւ մի՛ կերպարանիք
կերպարանօք աշխարհիս այսորիկ, այլ
նորոգեցարուք ի նորոգութիւն մտաց
ձերոց, առ ի քննել ձեզ [2]զկամն, և՛
եթէ զինչ են կամքն Աստուծոյ՝ բարին
և հաճոյն և կատարեալն։
3 Զայս ասեմ շնորհօքն Աստուծոյ որ
տուեալ են ինձ, ամենայնի որ է ի ձեզ,
մի՛ առաւել ինչ խորհել քան զարժանն
խորհելոյ, այլ խորհել ի զգաստանալ
իւրաքանչիւր՝ որպէս և բաժանեաց
4 Աստուած չափ հաւատոց։ Որպէս ի
միում մարմնի անդամս բազումս ու-
նիմք, և անդամքն ամենայն ոչ զնոյն
5 գործ ունին. Նոյնպէս և բազումքս
մի մարմին եմք ի Քրիստոս, այլ իւ-
րաքանչիւր միմեանց անդամք եմք։
6 Բայց ունիմք մեք շնորհս ըստ շնոր-
հացն, որ տուեալ են մեզ ազգս ազգս.
եթէ մարգարէութիւն՝ ըստ չափոյն
7 հաւատոց, Եթէ պաշտօն՝ ըստ պաշ-
տամանն, եթէ որ ուսուցանէն՝ ըստ
8 վարդապետութեանն, Եթէ որ մխի-
թարէն՝ ըստ մխիթարութեանն. որ
տայն է՝ զուարթութեամբ, որ վե-
րակացուն է՝ փութով, որ ողորմին՝
9 յոժարութեամբ։ Սէր առանց կեղծա-
ւորութեան, ատեալ զչար, զհետ եր-
10 թալ բարեաց. Յեղբայրսիրութեան
առ միմեանս գթածք. ի պատիւ զմի-
11 մեամբք երթալ. Ի փոյթ՝ մի՛ վեհե-
րոտք. հոգւով եռացէք. Տեառն ծա-
12 ռայեցէք. Յուսով խնդացէք. նեղու-
թեան համբերեցէք. աղօթից տևող
13 կացէք. Ի պէտս սրբոց հաղորդեցա-
րուք. զհիւրասիրութեան զհետ եր-
14 թայք. Օրհնեցէք զհալածիչս ձեր, օրհ-
15 նեցէք և մի՛ անիծանէք. Խնդալ ընդ
16 խնդացողս, լալ ընդ լացողս. Զնոյն
միմեանց խորհիջիք. մի՛ ամբարտա-
ւանէք, այլ ընդ խոնարհս գնացէք.
մի՛ լինիք իմաստունք յանձինս ձեր.
17 Մի՛ ումեք չարի չար հատուցանէք.
խորհեցարուք զբարիս առաջի ամե-
18 նայն մարդկան։ Եթէ հնար ինչ իցէ
ձեզ, ընդ ամենայն մարդկան զխաղա-
19 ղութիւն կալջիք։ Մի՛ զանձանց վրէժ
խնդրէք, սիրելիք, այլ տուք տեղի
բարկութեան. քանզի գրեալ է, Իմ է
վրէժխնդրութիւն, և ես հատուցից,
20 ասէ Տէր։ Այլ եթէ քաղցեալ իցէ

[1] Յոյնն, եղեն, զի առ ձերով ողորմութեամբդ և
[2] Ի բազումս գաղափարս

*թշնամին քո, հաց տուր նմա, եւ եթէ*
*ծարաւի՝ ջուր տուր նմա. զայս ա-*
*րարեալ՝ կայծակունս հրոյ կուտեսցես*
21 *ի գլուխ նորա։ Մի՛ յաղթիր ի չարէ,*
*այլ յաղթեա բարեաւն չարին։*

## ԳԼ. ԺԳ

1 **Ա**մենայն *անձն որ ընդ իշխանու-*
*թեամբ իցէ՝ ի հնազանդութեան կաց-*
*ցէ. քանզի ոչ ուստեք է իշխանու-*
*թիւն, եթէ ոչ յԱստուծոյ. եւ որ ենն՝*
2 *յԱստուծոյ կարգեալ են։ Այսուհետեւ*
*որ հակառակ կայ իշխանութեանն՝ Ա-*
*ստուծոյ հրամանին հակառակ կայ, եւ*
*որք հակառակն կան՝ անձանց դատաս-*
3 *տանս ընդունին։ Զի իշխանքն ոչ են*
*յերկիւղ բարեաց գործոց, այլ՝ չարաց.*
*կամի՞ս չերկնչել յիշխանութենէ անտի.*
*զբարիս գործեա, եւ ընկալցիս գովու-*
4 *թիւն ի նմանէ. Զի Աստուծոյ պաշ-*
*տօնեայ է քեզ ի բարիս. ապա եթէ*
*չար գործիցես, երկիր. զի ոչ եթէ*
*վայրապար ածեալ է սուսեր ընդ մէջ.*
*Աստուծոյ սպասաւոր է վրէժխնդիր ի*
*բարկութիւն այնմ՝ որ զչարն գործի-*
5 *ցէ։ Վասն որոյ հարկ է հնազանդ լի-*
*նել՝ ոչ միայն վասն բարկութեանն,*
6 *այլ եւ վասն խղճի մտացն։ Վասն այ-*
*նորիկ եւ հարկս հարկանէք, զի Ա-*
*ստուծոյ սպասաւորք են՝ ի նոյն կան-*
7 *խեալք։ Արդ հատուցէք իւրաքանչիւր*
*զպարտս. որում զհարկ՝ զհարկն, ո-*
*րում զմաքս՝ զմաքսն, որում զերկիւղ՝*
*զերկիւղն, որում զպատիւ՝ զպատիւն։*
8 *Եւ մի՛ ումեք պարտապան գտանի-*
*ցիք, բայց զմիմեանս սիրել. զի որ*
9 *սիրէ զընկերն՝ զօրէնսն կատարէ. ԶՄի՛*
*շնայցեսն, եւ Մի՛ սպանանիցես, եւ*
*Մի՛ գողանայցես, եւ Մի՛ սուտ վկայի-*
*ցես, եւ Մի՛ ցանկանայցես, եւ եթէ*
*այլ ինչ պատուիրան է՝ յայն բան բո-*
*վանդակի, եթէ Սիրեսցես զընկեր քո*
10 *իբրեւ զանձն քո։ Սէր ընկերի իւրում*
*չար ոչ առնէ. լրումն օրինացն սէր է։*
11 *Եւ զայս գիտասջիք վասն ժամանա-*
*կիս, զի արդ ժամ խակ է մեզ ի քնոյ*
*զարթնուլ. զի այժմ մերձ է մեզ փրր-*
*կութիւն քան յորժամ հաւատացաքն.*
12 *Գիշերն մերժեցաւ եւ տիւն մերձեցաւ.*
*ի՛բաց արասցուք այսուհետեւ զգործսն*
*խաւարի, եւ զգեցցուք զզէնն լուսոյ։*
13 *Իբրեւ ի տուընջեան զգաստացեալք*
*շրջեսցուք, մի՛ անառակութեամբք եւ*
*արբեցութեամբք, եւ մի՛ խառն ան-*
*կողնովք եւ պղծութեամբք, եւ մի՛ նա-*
14 *խանձու եւ հակառակութեամբ. Այլ*
*զգեցարուք զՏէր Յիսուս Քրիստոս,*
*եւ մարմնոյ խնամ մի՛ տանիք ի ցան-*
*կութիւնս։*

## ԳԼ. ԺԴ

1 **Ա**յլ *զտկարացեալն ի հաւատս ընկա-*
*լարուք՝ մի՛ խղճիւ երկմտութեանց։*
2 *Ոմն հաւատայ ուտել զամենայն, եւ*
3 *որ հիւանդն է՝ բանջար կերիցէ։ Որ*
*ուտէն, զայն որ ոչն ուտէ՝ մի՛ անգոս-*
*նեսցէ, եւ որ ոչն ուտէ, զայն որ ու-*
*տէն՝ մի՛ դատեսցի. քանզի Աստուած*
4 *զնա ընկալաւ։ Դու ո՞վ ես որ դատիս*
*զայլոյ ծառայ. իւրում Տեառն կայ*
*կամ անկանի. բայց կացցէ, զի կարող*
5 *է [1]Տէրն հաստատել զնա։ Ոմն [2]պահէ*
*օր ըստ օրէ եւ ոմն [2]պահէ զօրհանա-*
*պազ. իւրաքանչիւր ոք զիւր միտս*
6 *հաճեսցէ։ Որ խորհի զօրն՝ Տեառն*
*խորհի, եւ որ ոչն խորհի զօրն՝ Տեառն*
*չխորհի. եւ որ ուտէ՝ Տեառն ուտէ,*
*եւ գոհանայ զԱստուծոյ. եւ որ ոչն*
*ուտէ՝ Տեառն չուտէ, եւ գոհանայ զԱս-*
7 *տուծոյ։ Զի ոչ ոք ի մէնջ անձամբ*
8 *կեայ, եւ ոչ անձամբ մեռանի։ Եթէ*
*կեամք, Տեառն կեամք, եւ եթէ մե-*
*ռանիմք, Տեառն մեռանիմք. եւ արդ*
*եթէ՛ կեամք եւ եթէ՛ մեռանիմք,*
9 *Տեառն եմք։ Քանզի ի նոյն իսկ եւ*
*Քրիստոս մեռաւ եւ եկեաց, զի մեռե-*
*լոց եւ կենդանեաց առ հասարակ տի-*
10 *րեսցէ։ Դու զի՞ դատիս զեղբայր քո,*
*կամ ընդէ՞ր անգոսնես զեղբայր քո,*
*քանզի ամենեքին կալոց եմք առաջի*
11 *ատենին Քրիստոսի։ Զի գրեալ է,*
*կենդանի եմ ես, ասէ Տէր, զի ինձ*
*կրկնեսցի ամենայն ծունր, եւ ամենայն*
12 *լեզու խոստովան լիցի Աստուծոյ։ Ապա*
*ուրեմն իւրաքանչիւր ոք ի մէնջ ընդ*
13 *անձին համարս տացէ Աստուծոյ։ Ա յ-*
*սուհետեւ մի՛ զմիմեանս դատեսցուք,*
*այլ առաւել զայս դիք ի մտի՝ չդնել*
14 *[3]գայթակղութիւն եղբօրն։ Զայս գի-*

---

[1] Ոմանք, Աստուած
[2] Յոմն, դատի
[3] Բազումք, խոչ և գայթակղութիւն

տեմ եւ հաստատեալ եմ ի Քրիստոս
Յիսուս, զի ոչինչ է պիղծ նովաւ,
բայց այնմ որ համարիցի ոք ինչ պիղծ՝
15 նմա է պիղծ։ Զի եթէ վասն կերակրոյ
եղբայրն քո տրտմի, ոչ եւս սիրով
գնացեր. մի՛ կերակրովն քով զնա կո-
րուսաներ, վասն որոյ Քրիստոսն մե-
16 ռաւ։ Մի՛ հայհոյեսցի բարին ձեր։
17 Զի ոչ է արքայութիւնն Աստուծոյ կե-
րակուր եւ ըմպելի, այլ՝ արդարու-
թիւն եւ խաղաղութիւն եւ խնդու-
18 թիւն ի Հոգին Սուրբ։ Զի որ յայսմ
ծառայէ Քրիստոսի, հաճոյ է Աստու-
19 ծոյ, եւ ընտիր՝ մարդկան։ Ապա այ-
սուհետեւ զհետ երթիցուք զխաղա-
ղութեան եւ զշինութեան որ առ մի-
20 մեանս։ Մի՛ վասն կերակրոյ քակեր
զգործ Աստուծոյ. ամենայն ինչ սուրբ
է, այլ չար այնմ մարդոյ է որ [1]խղճիւն
21 ուտիցէ։ Լաւ է ոչ ուտել միս եւ ոչ
ըմպել գինի, եւ ոչ որով եղբայրն քո
գայթակղի կամ գթէ կամ տկարանայ։
22 Դու այսպէն հաւատս ունիս, կալ
առանձինն առաջի Աստուծոյ. երանի
որ ոչ դատիցի զանձն որով [2]զընտրեն
23 փորձիցէ։ Բայց որ խղճէն, թէպէտ
եւ ուտիցէ, դատապարտեալ է, զի ոչ
ըստ հաւատոյ է, զի ամենայն ինչ որ
24 ոչ ի հաւատոյ է՝ մեղք են։ [3]Այլ այնմ
որ կարողն է հաստատել զձեզ ըստ ա-
ւետարանիս իմում եւ ըստ քարոզու-
թեանն Յիսուսի Քրիստոսի, ըստ յայտ-
նութեան խորհրդոյն ժամանակօքն յա-
25 ւիտենից լռեցելոյ, Եւ յայտնելոյ այժ-
միկ ի ձեռն գրոց մարգարէականաց
ըստ հրամանի մշտնջենաւորին Ա-
ստուծոյ ի հնազանդութիւն հաւատոյ,
26 յամենայն հեթանոսս ծանուցելոյ, Մի-
այնոյ իմաստնոյն Աստուծոյ, ի ձեռն
Յիսուսի Քրիստոսի, որում փառք յա-
ւիտեանս։ Ամէն։՝՝

Գ Լ. ԺԵ

1 ԷԳ. Պարտ է մեզ որ կարողս եմք՝
զտկարութիւն տկարացն բառնալ, եւ
2 մի՛ անձանց եւեթ հաճոյ լինել, Այլ
իւրաքանչիւր ոք ի մէնջ ընկերին հա-
ճոյ լիցի ի բարիս վասն շինութեան։
3 Քանզի եւ Քրիստոս ոչ եթէ անձին
հաճոյ եղեւ, այլ որպէս եւ գրեալ է,
Նախատինք նախատչաց քոց անկան ի
4 վերայ իմ։ Բայց որ ինչ գրեցաւն՝ ի
մեր վարդապետութիւն գրեցաւ, զի
համբերութեամբ եւ մխիթարութեամբ
5 գրոց պյոյսն ընկալցուք։ Այլ Աստուած
համբերութեան եւ [2]ամենայն մխիթա-
րութեան՝ տացէ ձեզ զնոյն խորհել
ընդ միմեանս ըստ Յիսուսի Քրիստո-
6 սի. Զի միաբանութեամբ ի մի բերան
փառաւոր առնիցէք զԱստուած եւ
զՀայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
7 տոսի։ Վասն որոյ ընկալարուք զմի-
մեանս, որպէս եւ Քրիստոս ընկալաւ
[4]զձեզ ի փառս Աստուծոյ։
8 Այլ ասեմ թէ [5]Քրիստոսի սպասաւոր
թլփատութեանն լինել վասն ճշմար-
տութեանն Աստուծոյ էր, առ ի հաս-
տատուն առնելոյ զաւետիս հարցն։
9 Այլ հեթանոսք վասն ողորմութեան
փառաւոր առնեն զԱստուած. որպէս
եւ գրեալ է, Վասն այսորիկ գոհացայց
զքէն ի հեթանոսս, եւ անուան քում
10 սաղմոս ասացից։ Եւ դարձեալ ասէ թէ՝
Ուրախ լերուք, հեթանոսք, ընդ ժո-
11 ղովրդեան նորա։ Եւ դարձեալ թէ՝ Օրհ-
նեցէք, ամենայն հեթանոսք, զՏէր, եւ
գովեցէք զնա, ամենայն ժողովուրդք։
12 Եւ դարձեալ Եսայի ասէ, Եղիցի ար-
մատն Յեսսեայ, եւ որ կանգնելոցն է
իշխան հեթանոսաց, ի նա հեթանոսք
13 յուսասցին։ Այլ Աստուած յուսոյ լի
արասցէ զձեզ ամենայն խնդութեամբ
եւ խաղաղութեամբ, առաւելուլ ձեզ
յուսով զօրութեամբ Հոգւոյն Սրբոյ։
14 ԷԴ. Հաստատեալ եմ եւ ես ինքնին,
եղբարք իմ, վասն ձեր, զի եւ դուք
լի էք բարութեամբ, լի էք ամենայն
գիտութեամբ, կարող էք եւ զմիմեանս
15 խրատել։ Այլ համարձակագոյնս գրեցի
առ ձեզ, [6]եղբարք, փոքր ի շատէ,
իբրեւ յիշեցուցանելով ձեզ վասն շնոր-
հացն որ տուեալ են ինձ յԱստուծոյ.
16 Լինել ինձ սպասաւոր Յիսուսի Քրիս-
տոսի ի հեթանոսս, ըղձակերտս առնել
զաւետարանն Աստուծոյ, զի եղիցի

[1] Յայնս, ի գայթակղութիւն
[2] Ի Յոյնսն պակասէ
[3] Զայս հատուածս ասեն ոմանք աստ միայն, բազումք ի կատարածի ԺԶ գլխոյն եդեն. եւ այլ օրինակք, երկու տեղիս, եւ՛ աստ եւ՛ անդ։
[4] Ոմանք, զմեզ
[5] Ոմանք, Յիսուսի Քրիստոսի
[6] Ի Յունարէն պակասէ

պատարագն հեթանոսաց ընդունելի՝
17 սրբեալ Հոգւովն Սրբով։ Ունիմ այ-
սուհետեւ պարծանս ի Քրիստոս Յի-
18 սուս առ Աստուած։ Քանզի ոչ իշխեմ
խօսել ինչ զոր ոչ գործեաց Քրիստոս
ինեւ ի հնազանդութիւն հեթանոսաց
19 բանիւք եւ արդեամբք, Զօրութեամբ
նշանաց եւ արուեստից, զօրութեամբ
Հոգւոյն [1]Սրբոյ, որպէս ինձ յԵրուսա-
ղեմէ եւ շուրջ մինչեւ ի կողմանս Իւ-
րիկացւոց լնուլ զաւետարանն Քրիս-
20 տոսի։ Այնպէս առատացեալ յաւետա-
րանել, ոչ ուր անուանեցաւ Քրիստոս,
զի մի՛ ի բերեւ յայլոց հիման վերայ շի-
նիցեմ, այլ որպէս եւ գրեալ է թէ,
21 Որոց ոչ պատմեցաւ վասն Նորա՝ տես-
ցեն, եւ որոց ոչ իցէ լուեալ՝ ի միտ
22 առցեն։ Վասն որոյ չատ խափանեցայ
23 գալ առ ձեզ։ Բայց արդ ոչ եւս գոյ
ինձ տեղի ի կողմանս յայսոսիկ, եւ
անձուկ յոյժ ունիմ ի բազում ամաց
24 գալ առ ձեզ, Յորժամ անցանիցեմ ի
Սպանիա, ակն ունիմ յանցանելն առ
նոսա՝ տեսանել զձեզ, եւ ի ձէնջ յու-
ղարկել անդր, եթէ նախ իսկ փոքր
25 ի շատէ ձեւք լցայց։ Բայց այժմ եր-
թամ յԵրուսաղէմ պաշտել զսուրբսն։
26 Քանզի հաճոյ թուեցաւ Մակեդոնա-
ցւոցն եւ Աքայեցւոցն հաղորդութիւն
ինչ առնել ընդ աղքատս սրբոցն որ
27 են յԵրուսաղէմ։ Հաճոյ թուեցաւ,
քանզի եւ պարտապան իսկ են նոցա.
զի եթէ հոգեւորացն նոցա հաղորդ ե-
ղեն հեթանոսք, պարտին եւ մարմնա-
28 ւորացն կցորդ լինել։ Արդ զայս կա-
տարեալ եւ կնքեալ զպտուղ նոցա,
29 անցից առ ձեւք ի Սպանիա։ Զայս գի-
տեմ, զի ի գալն իմում առ ձեզ՝ լրու-
թեամբ օրհնութեան [2]աւետարանին
Քրիստոսի եկից։
30 ԻԵ. Աղաչեմ զձեզ, եղբարք, ի ձեռն
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի
եւ սիրով Հոգւոյն, պատերազմակից
լինել ինձ յաղօթս վասն իմ առ Աս-
31 տուած. Զի ապրեցայց յապստամ-
բացն որ ի Հրէաստանի են. եւ պաշ-
տօնն իմ որ յԵրուսաղէմ՝ ընդունելի
32 լիցի սրբոցն. Զի խնդութեամբ եկեալ
առ ձեզ ի կամս Աստուծոյ, հանգեայց
33 ընդ ձեզ։ Եւ Աստուած խաղաղու-
թեան եղիցի ընդ ձեզ ամենեսեան։
Ամէն։

ԳԼ. ԺԶ

1 Յանձն առնեմ ձեզ զՓիբէ զքոյր
մեր, որ է սպասաւոր եկեղեցւոյն
2 Կենքրացւոց. Զի զնա ընկալջիք ի
Տէր արժանի սրբոց, եւ վերակացու
լինիջիք նմա յոր պէտս իրաց եւ կո-
չեսցէ զձեզ. քանզի եւ նա վերա-
կացու եղեւ բազմաց, եւ ինձ իսկ ի
գլխովին։
3 Ողջոյն տաջիք Պրիսկեայ եւ Ակիւ-
ղայ՝ գործակցաց իմոց ի Քրիստոս Յի-
4 սուս. Որք ընդ անձին իմոյ զիւրեանց
պարանոցս մատուցին. զորոց ոչ ես
միայն գոհանամ, այլ եւ ամենայն ե-
5 կեղեցիք հեթանոսաց. Եւ տանն
եկեղեցւոյն նոցա։ Ողջոյն տաջիք Ե-
պենետեայ սիրելւոյ իմոյ՝ որ է պտուղ
6 [3]Ասիացւոց ի Քրիստոս։ Ողջոյն տաջիք
Մարեայ՝ որ բազում վաստակս վաս-
7 տակեաց ի ձեզ։ Ողջոյն տաջիք Անդ-
րոնիկեայ եւ Յունեայ ազգականաց
իմոց եւ գերեկցաց, որք երեւելիքն
իսկ են յառաքեալս, որք եւ յառաջ
8 իսկ քան զիս եղեն ի Քրիստոս։ Ողջոյն
տաջիք Ամպղեայ սիրելւոյ իմոյ ի Տէր։
9 Ողջոյն տաջիք Ուրբանեայ գործակցի
իմոյ ի Տէր, եւ Ստաքեայ սիրելւոյ
10 իմոյ։ Ողջոյն տաջիք Ապեղեայ՝ որ ըն-
11 տիրն է ի Տէր։ Ողջոյն տաջիք նոցա
որ յԱրիստաբուղեայ տանէ անտի են։
Ողջոյն տաջիք Հերովդիոնեայ ազգա-
կանի իմոյ։ Ողջոյն տաջիք այնոցիկ
որք ի Նարկիսեայ տանէն իցեն ի Տէր։
12 Ողջոյն տաջիք Տրիփոսեայ եւ Տրիփո-
նեայ վաստակաւորաց ի Տէր։ Ողջոյն
տաջիք Պերսիդեայ սիրելւոյ, որ բա-
զում վաստակս վաստակեաց ի Տէր։
13 Ողջոյն տաջիք Ռուփայ ընտրելոյ ի
14 Տէր, եւ մօր նորա եւ իմոյ։ Ողջոյն
տաջիք Ասիւնկրիտեայ, Փղեգոնտեայ,
Երմայ, Պատրոբայ, Երմեայ, եւ որ
15 ընդ նոսա եղբարք իցեն։ Ողջոյն տա-
ջիք Փիղողոգեայ, եւ Յուղեայ, Ներ-
եայ եւ քեռ նորա, եւ Ողիմպեայ, եւ
որ ընդ նոսա սուրբք ամենեքին իցեն։

[1] Ոմանք, Աստուծոյ
[2] Յոմանս պակասէ
[3] Ոմանք, Աքայեցւոց

16 Ողջոյն տաջիք միմեանց ի համբոյր
սրբութեան. ողջոյն տան ձեզ [1]ամե-
նայն եկեղեցիք Քրիստոսի։
17 Եւ Աղաչեմ զձեզ, եղբարք, դիտել
զայնպիսիսն որ հերձուածս եւ գայ-
թակղութիւնս առնիցեն արտաքոյ
վարդապետութեանն զոր դուքն ու-
սարուք. եւ խորշեցարուք ի նոցանէ։
18 Զի այնպիսիքն Տեառն մերում [2]Քրիս-
տոսի ոչ ծառայեն, այլ իւրեանց որո-
վայնին. եւ քաղցրաբանութեամբ եւ
օրհնութեամբ պատրեն զսիրտս անմե-
19 ղաց։ Զի ձեր հնազանդութիւնդ առ
ամենեսեան հասեալ է. եւ արդ ի ձեզ
ուրախ եմ. բայց կամիմ զձեզ իմաս-
տունս լինել ի բարիս, եւ անմեղս՝ ի
20 չարիս։ Եւ Աստուած խաղաղութեան
խորտակեսցէ զՍատանայ ընդ ոտիւք
ձերովք մերձ ընդ մերձ։ Շնորհք Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ։
21 Ողջոյն տայ ձեզ Տիմոթէոս [3]եղբայր
եւ" գործակից իմ եւ Ղուկիոս եւ Յա-
սովն եւ Սոսիպատրոս՝ ազգականք իմ։
22 (Ողջոյն տամ ձեզ եւ ես Տերտիոս, որ
23 զթուղթս գրեցի, ի Տէր։) Ողջոյն տայ
ձեզ Գայիոս ասպնջական իմ եւ ամե-
նայն եկեղեցւոյն։ Ողջոյն տայ ձեզ Ե-
րաստոս շահապ քաղաքիս եւ Կուար-
տոս եղբայր։[4]
24 Այլ այնմ, որ կարողն է հաստատել
զձեզ ըստ աւետարանիս իմում, եւ
ըստ քարոզութեանն Յիսուսի Քրիս-
տոսի, ըստ յայտնութեան խորհրդոյն
25 ժամանակօքն յաւիտենից լռեցելոյ, Եւ
յայտնելոյ այժմիկ ի ձեռն գրոց մար-
գարէականաց ըստ հրամանի մշտնջե-
նաւորին Աստուծոյ, ի հնազանդութիւն
հաւատոց, յամենայն հեթանոսս ծա-
26 նուցելոյ, Միայնոյ իմաստնոյն Աստու-
ծոյ ի ձեռն Յիսուսի Քրիստոսի, նմա
27 փառք յաւիտեանս։ Ամէն։ [3]Շնորհք
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ
ձեզ ամենեսեան։"

Առ Հռովմայեցիս գրեցաւ ի Կորնթոսէ ի ձեռն Փիբեայ սարկաւագի։

---

[1] Յոմանս պակասէ
[2] Ոմանք, Յիսուսի Քրիստոսի
[3] Ի Յոյնն պակասէ

[4] Ոմանք յաւելուն, Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ընդ ամենեսին։ Ամէն։

# ԱՌ ԿՈՐՆԹԱՑԻՍ

## ԱՌԱՋԻՆ ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 Ա.Դ. ՊԱՒՂՈՍ, *կոչեցեալ առաքեալ*
*Յիսուսի Քրիստոսի կամօքն Աստու-*
2 *ծոյ, եւ Սոսթենէս եղբայր. Եկեղեց-*
*ւոյդ Աստուծոյ որ է ի Կորնթոս, նուի-*
*րելոց ի Քրիստոս Յիսուս, կոչեցելոց*
*սրբոց, ամենեքումբք հանդերձ որք*
*կարդան զանուն Տեառն մերոյ Յիսու-*
*սի Քրիստոսի յամենայն տեղիս՝ նոցա*
3 *եւ մեր. Շնորհք ընդ ձեզ եւ խաղա-*
*ղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ եւ*
*ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ։*
4 *Գոհանամ զԱստուծոյ իմոյ յամե-*
*նայն ժամ վասն ձեր ի վերայ շնոր-*
*հացն Աստուծոյ որ տուեալ են ձեզ*
5 *ի Քրիստոս Յիսուս. Զի յամենայնի*
*մեծացարուք դուք նովաւ ամենայն*
6 *բանիւ եւ ամենայն գիտութեամբ. Որ-*
*պէս վկայութիւնն իսկ Աստուծոյ հաս-*
7 *տատեցաւ ի ձեզ. Զի դուք մի՛ նուա-*
*զիցիք եւ մի՛ իւիք շնորհօք, ակնկա-*
*լեալ յայտնութեանն Տեառն մերոյ Յի-*
8 *սուսի Քրիստոսի. Որ եւ հաստա-*
*տեսցէ զձեզ մինչեւ ի կատարած ա-*
*նարատս յօրն Տեառն մերոյ Յիսուսի*
9 *Քրիստոսի։ Հաւատարիմ է Աստուած,*
*որով կոչեցարուք ի հաղորդութիւն*
*Որդւոյ նորա Յիսուսի Քրիստոսի*
*Տեառն մերոյ։*
10 ԱԶ. *Աղաչեմ զձեզ, եղբարք, ան-*
*ուամբն Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-*
*տոսի. զի զնոյն բան ունիցիք ամե-*
*նեքեան, եւ մի՛ իցեն ի ձեզ հեր-*
*ձուածք. [1]քանզի էիք՟ հաստատեալք*
11 *ի նոյն միտս եւ ի նոյն հանճար։ Ազդ*
*եղեւ ինձ վասն ձեր, եղբարք, ի*
*Քղուացւոց անտի, թէ հակառակու-*
12 *թիւնք են ի ձեզ։ Եւ արդ ասեմ իսկ,*
*եթէ իւրաքանչիւր ոք ի ձէնջ ասէ,*
*Ես Պաւղոսեան եմ, եւ [2]միւսն՝ եթէ*
*Ես Ապողոսեան եւ [2]միւսն՝ եթէ Ես*
*Կեփայեան. եւ [2]միւսն՝ եթէ Ես Քրիս-*
13 *տոսեան։ Իսկ արդ բաժանեա՞լ ինչ*
*իցէ Քրիստոս. միթէ Պաւղո՞ս ի խաչ*
*ելեալ իցէ վասն ձեր, կամ յանուն*
14 *Պաւղոսի՞ մկրտեցարուք։ [3]Գոհանամ*
*զԱստուծոյ իմոյ զի՟ ոչ զոք ի ձէնջ*
*մկրտեցի բայց միայն զԿրիսպոս եւ*
15 *զԳայիոս, զի մի՛ ոք ասիցէ, Թէ յիմ*
16 *անուն մկրտեցարուք։ Տալ եւս կնիք*
*եւ տանն Ստեփանեայ. զայլ ոք ոչ գի-*
*տեմ ամենեւին թէ մկրտեցի։*
17 *Զի ոչ առաքեաց զիս Քրիստոս մկըր-*
*տել, այլ աւետարանել. ոչ ճարտարու-*
*թեամբ բանից, զի մի՛ ընդունայն լիցի*
18 *խաչն Քրիստոսի։ Զի բան խաչին կո-*
*րուսելոցն յիմարութիւն է, այլ փրկե-*
19 *լոցս մեզ՝ զօրութիւն Աստուծոյ։ Զի*
*գրեալ է, Կորուսից զիմաստութիւն ի-*
*մաստնոց, եւ զխորհուրդս խորհրդա-*
20 *կանաց արհամարհեցից։ Ո՞ւր իմաս-*
*տուն, ո՞ւր դպիր, ո՞ւր քննիչ աշխար-*
*հիս այսորիկ. ո՞չ ապաքէն յիմարեցոյց*
*Աստուած զիմաստութիւն աշխարհիս*
21 *այսորիկ։ Քանզի իմաստութեամբն Աս-*
*տուծոյ ոչ ծանեաւ աշխարհ իմաս-*
*տութեամբն զԱստուած, հաճեցաւ*
*Աստուած յիմարութեամբ քարոզու-*
*թեանն ապրեցուցանել զհաւատացեալս։*
22 ԲԿ. *Իսկ որովհետեւ Հրեայք նշան*
*հայցեն, եւ հեթանոսք իմաստութիւն*
23 *խնդրեն, Մեք քարոզեսցուք զխաչե-*
*եալն Քրիստոս, Հրէից գայթակղու-*

[1] Յոյնն. այլ զի իցէք

[2] Ի Յոյնին պակասէ

[3] Ոմանք, Գոհանամ զի. այլք՝ Գոհանամ զԱստուծոյ զի. բազմաւորք ոմանք, եբրեւ ըստ Յունին, Գոհանամ զԱստուծոյ իմոյ զի

թիւն եւ հեթանոսաց յիմարութիւն ․
24 Բայց նոցին իսկ կոչեցելոցն Հրէից եւ
հեթանոսաց, զՔրիստոս՝ Աստուծոյ
զօրութիւն եւ Աստուծոյ իմաստու-
25 թիւն ։ Զի յիմարն Աստուծոյ իմաստ-
նագոյն է քան զմարդիկ, եւ տկարն
Աստուծոյ զօրագոյն է քան զմարդիկ ։
26 Թէպէտ եւ զձեր իսկ կոչումնդ տեսէք,
եղբարք, զի ոչ բազում իմաստունք
ըստ մարմնոյ, եւ ոչ բազում հզօրք, եւ
27 ոչ բազում ազնուականք ․ Այլ զյիմարս
աշխարհիս ընտրեաց Աստուած, զի յա-
մօթ արասցէ զիմաստունս ․ եւ զտկարս
աշխարհիս ընտրեաց Աստուած, զի յա-
28 մօթ արասցէ զհզօրս ․ Եւ զանտոհմս
աշխարհի եւ զարհամարհեալս ընտրեաց
Աստուած եւ զոչինչսն, զի զէսն իմն
29 խափանեսցէ ․ Որպէս զի մի՛ պարծեսցի
ամենայն մարմին առաջի Աստուծոյ ։
30 Զի ի նմանէ դուք էք ի Քրիստոս Յի-
սուս, որ եղեւ մեզ իմաստութիւն յԱս-
տուծոյ, արդարութիւն եւ սրբութիւն
31 եւ փրկութիւն ․ Զի որպէս եւ գրեալ
է, Որ պարծին՝ ի Տէր պարծեսցի ։

## Գլ․ Բ

1 Եւ ես [1]թէպէտ եւ եկի առ ձեզ, եղ-
բարք, ոչ՞ ըստ առաւելութեան ինչ
բանից [2]իմաստութեան պատմել ձեզ
2 զվկայութիւնն Աստուծոյ ։ Զի ոչ եթէ
ի մտի եդի գիտել ինչ ի ձեզ, բայց
միայն զՅիսուս Քրիստոս, եւ զնոյն
3 ի խաչ ելեալ ։ Եւ ես տկարութեամբ
եւ երկիւղիւ եւ դողութեամբ բազմաւ
4 եղէ առ ձեզ ․ Եւ բանն իմ եւ քարո-
զութիւն ոչ պատիր բանիւք [3]իմաս-
տութեան, այլ՝ արդեամբք Հոգւոյն
5 եւ զօրութեամբ ․ Զի հաւատք ձեր
մի՛ իցեն իմաստութեամբ մարդկան,
այլ՝ զօրութեամբ Աստուծոյ ։ ՎԶ
6 Զիմաստութիւն խօսիմք ընդ կա-
տարեալս, զիմաստութիւն, ոչ զաշ-
խարհիս այսորիկ եւ ոչ զիշխանաց աշ-
7 խարհիս այսորիկ զխափանելեացս, Այլ
խօսիմք զԱստուծոյ իմաստութիւնն
ծածուկ խորհրդով, զոր յառաջ քան
զյաւիտեանս սահմանեաց Աստուած
8 ի փառս մեր ․ Զոր ոչ ոք յիշխանաց
աշխարհիս այսորիկ ծանեաւ ․ զի եթէ
էր ծանուցեալ, ոչ արդեւք զՏէրն փա-
9 ռաց ի խաչ հանէին ։ Այլ որպէս եւ
գրեալ է, Զոր ակն ոչ ետես եւ ունկն
ոչ լուաւ եւ ի սիրտ մարդոյ ոչ ան-
կաւ, պատրաստեաց Աստուած սիրե-
լեաց իւրոց ։
10 ԲԴ․ Այլ մեզ յայտնեաց Աստուած
Հոգւովն իւրով ․ զի Հոգին զամենայն
11 քննէ եւ զխորս Աստուծոյ ։ Զի ո՞ ոք
ի մարդկանէ գիտէ ինչ զմարդոյն, եթէ
ոչ հոգի մարդոյն որ ի նմա ․ նոյնպէս
եւ ոչ զԱստուծոյսն ոք գիտէ, եթէ
12 ոչ Հոգին Աստուծոյ ։ Այլ մեք ոչ եթէ
զհոգի աշխարհիս այսորիկ առաք, այլ
զՀոգին որ յԱստուծոյ ․ զի ծանիցուք
զայն որ յԱստուծոյն շնորհեցաւ մեզ ։
13 Եւ զոր խօսիմքս՝ ոչ եթէ մարդկեղէն
ուսմամբ ճարտարութեան բանից, այլ
վարդապետութեամբ [4]Հոգւոյն, ընդ
հոգեւորս զհոգեւորսն համեմատեմք ։
14 Քանզի շնչաւոր մարդ ոչ ընդունի
զՀոգւոյն Աստուծոյ, զի յիմարութիւն
է նմա ․ եւ ոչ կարէ գիտել, [5]եթէ հո-
15 գեպէս քննիցի՞ ։ Իսկ հոգեւորն քննէ
զամենայն, եւ ինքն յումեքէ ոչ քննի ։
16 Իսկ արդ ո՞վ գիտաց զմիտս Տեառն,
որ եւ խրատտու լինիցի նմա ․ այլ մեք
զմիտս Քրիստոսի ունիմք ։

## Գլ․ Գ

1 Եւ ես, եղբարք, ոչ կարացի խօսել
ընդ ձեզ իբրեւ ընդ հոգեւորս, այլ իբ-
2 րեւ ընդ մարմնաւորս ։ Իբրեւ տղայոց
ի Քրիստոս կաթն ջամբեցի ձեզ եւ ոչ
կերակուր, զի ոչ եւս կարէիք ․ նա
եւ արդ իսկ ոչ կարէք, քանզի դեռ
3 մարմնաւոր էք ։ Ուր եւ արդ են իսկ
ի ձեզ հեռ եւ [6]նախանձ, ո՞չ ապաքէն
մարմնաւոր էք եւ ըստ մարդկան գնայք ։
4 Յորժամ ասէ ոք [7]ի ձէնջ, Ես Պաւ-
ղոսեան եմ, եւ միւսն՝ եթէ Ես Ապո-
ղոսեան, ո՞չ [8]մարդիկ էք ․ իսկ արդ
ո՞վ է Պաւղոսն կամ ո՞վ է Ապողոս ․
5 Պաշտօնեայք՝ որովք հաւատացէքն,
եւ իւրաքանչիւր որպէս եւ Տէր ետ ։

[1] Յոյնն, որ եկի առ ձեզ, եղբարք, եկի ոչ
[2] Յոյնն, կամ իմաստութեան
[3] Ոմանք, մարդկեղէն իմաստութեան
[4] Ոմանք, Հոգւոյն Սրբոյ
[5] Յոյնն, զի հոգեպէս քննի
[6] Ոմանք, նախանձ եւ հերձուած
[7] Ի Յոյնին պակասէ
[8] Ոմանք, մարմնաւոր

6 Ես տնկեցի, Ապողոս ջուր ետ, այլ
7 Աստուած աճեցոյց։ Այսուհետեւ ոչ
այն ինչ ոք է որ տնկեացն, եւ ոչ այն՝
որ զջուրն ետ, այլ որ աճեցոյցն՝ Աս-
8 տուած։ Որ տնկեացն եւ որ զջուրն
ետ՝ մի են. բայց իւրաքանչիւր ոք
զիւր վարձս առնուցու ըստ իւրում
9 վաստակոց։ Զի Աստուծոյ գործակից
եմք, Աստուծոյ [1]արդիւն էք, Աստու-
10 ծոյ շինած էք։ Ըստ շնորհացն Աստու-
ծոյ որ տուեալ են ինձ, իբրեւ իմաս-
տուն ճարտարապետ հիմն եդի, բայց
այլ է որ շինէն. այլ իւրաքանչիւր ոք
11 զգոյշ լիցի թէ որպէս շինիցէ։ Զի հիմն
այլ՝ ոք ոչ կարէ դնել քան զեդեալն,
որ է Յիսուս Քրիստոս։ ՎԶ
12 Եթէ ոք շինէ ի վերայ հիմանս այ-
սորիկ ոսկի, արծաթ, ականս պատ-
13 ուականս, փայտ, խոտ, եղէգն, Իւ-
րաքանչիւր գործն յայտնելոց է. զի
օրն ընտրեսցէ. զի հրով յայտնելոց է.
եւ զիւրաքանչիւր գործն զիարդ եւ
14 իցէ, հուրն փորձեսցէ։ Եթէ ուրուք
գործն զոր շինեաց՝ կացցէ, վարձս
15 առցէ. Եւ եթէ ուրուք գործն այրես-
ցի՝ տուժեսցի, բայց ինքն կեցցէ, այլ
16 այնպէս՝ որպէս թէ [2]ի հուր։ Ո՞չ գի-
տէք եթէ տաճար էք Աստուծոյ, եւ
17 Հոգի Աստուծոյ բնակեալ է ի ձեզ։ Եթէ
ոք զտաճար Աստուծոյ ապականէ, ա-
պականեսցէ զնա Աստուած. զի տա-
ճար Աստուծոյ սուրբ է, որ էք դուք։
18 Մի՛ ոք զանձն խաբեսցէ. եթէ ոք
կամիցի ի ձէնջ իմաստուն լինել յաշ-
խարհիս յայսմիկ, յիմար լիցի, զի ե-
19 ղիցի իմաստուն։ Զի իմաստութիւն
աշխարհիս այսորիկ յիմարութիւն է
առաջի Աստուծոյ, քանզի գրեալ է
թէ, Որ ըմբռնէ զիմաստունս ի խո-
20 րագիտութեան իւրեանց։ Եւ դարձեալ
թէ, Տէր ճանաչէ զխորհուրդս իմաստ-
21 նոց զի են ընդունայն։ Այսուհետեւ
22 մի՛ ոք պարծեսցի [3]ի մարդկանէ. Զի
ամենայն ինչ ձեր է, եթէ Պաւղոս,
եթէ Ապողոս, եթէ Կեփաս, եթէ աշ-
խարհ, եթէ կեանք, եթէ մահ, եթէ
որ կանս, եթէ հանդերձեալքն, ամե-
23 նայն ինչ ձեր է. Դուք Քրիստոսի,
Քրիստոս՝ Աստուծոյ։

[1]կամ, արտ
[2]Յոյնն, ընդ հուր
[3]Յոյնն, ի մարդիկ

ԳԼ. Դ

1 Այսպէս համարեսցին զմեզ մարդիկ,
իբրեւ զպաշտօնեայս Քրիստոսի եւ
հազարապետս խորհրդոցն Աստուծոյ։
2 Արդ խնդիր է ի մէջ հազարապետաց
3 եթէ ոք հաւատարիմ գտցի։ Այլ ինձ
եւ այս [4]անարգանք են", եթէ ի ձէնջ
զատեցայց կամ [5]ընաւ իսկ ի մարդկա-
4 նէ". Նաեւ զանձն իմ ոչ քննեմ։ Զի
ոչինչ զիտեմ զանձին իմոյ. այլ ոչ
եթէ այսու արդարանամ, զի որ քննէն
5 զիս՝ Տէր է։ Այսուհետեւ մի՛ յառաջ
քան զժամանակն դատիք, մինչեւ ե-
կեսցէ Տէր, որ լուսաւոր առնիցէ
զգաղտնիս խաւարի, եւ յայտնիցէ
զխորհուրդս սրտից. եւ ապա իւրա-
քանչիւր գովութիւն եղիցի յԱստուծոյ։
6 Զայս, եղբարք, առակեցի յանձն իմ
եւ յԱպողոս վասն ձեր. զի ի մէնջ ուս-
ջիք մի՛ ինչ առաւել քան զգրեալսն ի-
մանալ, զի մի՛ այր քան զընկեր հպար-
7 տանայցէք ի վերայ ընկերին։ Իսկ արդ
ո՞վ է [6]որ քննիցէ" զքեզ. զի՞նչ ունիս
զոր ոչ իցէ առեալ. եւ եթէ առեր,
զի՞ պարծիս իբրեւ զչառեալ։
8 Արդէն իսկ յագեալ իցէք եւ արդէն
մեծացարուք, առանց մեր թագաւո-
րեցէք, եւ երանի թէ թագաւորէիք,
զի եւ մեք ընդ ձեզ թագաւորէաք։
9 Ինձ այսպէս թուի թէ զմեզ զառաք-
եալս յետնորդս արար Աստուած իբրեւ
զմահապարտս. զի տեսիլ եղեաք աշ-
խարհի եւ հրեշտակաց եւ մարդկան։
10 Մեք յիմարք վասն Քրիստոսի, եւ դուք
իմաստունք ի Քրիստոս. մեք տկարք՝
եւ դուք հզօրք. դուք փառաւորեալք՝
11 եւ մեք անարգք։ Մինչեւ ցայսօր ժա-
մանակի ե՛ւ քաղցեաք ե՛ւ ծարաւե-
ցաք ե՛ւ մերկ գնացաք ե՛ւ կոփահա-
12 րեցաք ե՛ւ անհանգիստ եղեաք, Եւ
աշխատեցաք ձեռօք մերովք. բամբա-
սէին զմեզ, օրհնէաք. հալածէին,
13 յանձն առնուաք. Հայհոյէին, աղա-
չէաք. իբրեւ առակ նշաւակի եղեաք
[7]ամենայն աշխարհի, ամենեցուն փա-
14 րեալի լինել մինչեւ ցայժմ։ Ոչ եթէ

[4]Յոյնն, դոյզն ինչ է
[5]Յոյնն, ի մարդկեղէն օրէ (դատաստանէ)
[6]Յոյնն, որ խտրէն
[7]Ի Յունին պակասի

յամօթ ինչ առնելով զձեզ գրեմ զայս,
այլ իբրեւ զորդիս սիրելիս խրատեմ։
15 Թէպէտ եւ բեւր դաստիարակս ունի-
ցիք ի Քրիստոս, այլ ոչ եթէ բազում
հարս, զի ի Քրիստոս Յիսուս աւե-
16 տարանաւն ես ծնայ զձեզ։ Արդ ա-
ղաչեմ զձեզ, նմանողք ինձ [1]եղիջիք։
17 Վասն այնորիկ առաքեցի առ ձեզ զՏի-
մոթէոս, որ է իմ որդի սիրելի եւ հա-
ւատարիմ ի Տէր. որ յիշեցուսցէ ձեզ
զճանապարհս իմ որ ի Քրիստոս Յի-
սուս. որպէս եւ ամենայն ուրեք յա-
18 մենայն եկեղեցիս ուսուցանեմ։ Որպէս
թէ ես չիցեմ գալոց առ ձեզ, ոմանք
19 հպարտացան։ Այլ եկից հուպ ընդ
հուպ, եթէ Տէր կամեսցի. եւ ի միա
առից ոչ զբանս հպարտացելոցն, այլ՝
20 զզօրութիւն։ Զի ոչ եթէ բանիւք է
արքայութիւնն Աստուծոյ, այլ՝ զօրու-
21 թեամբ։ Արդ, ո՞րպէս կամիք, գաւա-
զանա՞ւ եկից առ ձեզ, եթէ [2]սիրով
հոգւոյն հեզութեան եւ արդարութեան
եւ խոնարհութեան՞։

Գլ· Ե

1 Բնաւ եւ անուանի իսկ ի ձեզ [3]ընդէ՞ր
պոռնկութիւն, եւ այնպիսի պոռնկու-
թիւն՝ որ ոչ եւ ի հեթանոսս, որպէս
2 թէ զկին հօր իւրոյ ունել։ Եւ դուք
հպարտացեալ էք, եւ ոչ առաւել սգա-
ցարուք, զի բարձցի ի միջոյ ձերմէ որ
3 զգործն զայն գործեաց։ Զի ես թէպէտ
եւ մարմնով մեկուսի եմ, սակայն հոգ-
ւով մերձ եմ. բայց արդէն իսկ իբրեւ
ի մօտոյ ընտրեցի, զայն որ այնպէսն
4 գործեաց, Յանուն Տեառն մերոյ Յի-
սուսի Քրիստոսի ժողովել ձեզ ի մի-
ասին եւ իմոյ հոգւոյս՝ զօրութեամբն
հանդերձ Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
5 տոսի, Մատնել զայնպիսին Սատա-
նայի ի սատակումն մարմնոյ, զի հոգին
ապրեսցի յաւուրն Տեառն մերոյ Յի-
6 սուսի Քրիստոսի։ Ոչ բարւոք են պար-
ծանքդ ձեր. ո՞չ գիտէք եթէ փոքր մի
խմոր զամենայն զանգուածն խմորէ։
7 Սրբեցէք ի բաց զհին խմորն, զի եղի-
ջիք նոր զանգուած, որպէս էքդ ան-
խմորք. քանզի զատիկ մեր զենաւ
8 Քրիստոս։ Այսուհետեւ արասցուք
տօնս՝ մի՛ ի խմորն հին եւ մի՛ ի խմորն
չարութեան եւ անզգամութեան, այլ
յանխմոր սրբութեան եւ ճշմար-
տութեան։
9 ԲՋ. Գրեցի ձեզ ի թղթի այդր չխառ-
10 նակել ընդ պոռնիկս։ Եւ ոչ եթէ ընդ
պոռնիկս աշխարհիս այսորիկ կամ ընդ
ագահս կամ ընդ յափշտակողս կամ
ընդ կռապաշտս. ապա թէ ոչ՝ պար-
11 տէիք եւ յաշխարհէ իսկ ելանել։ Բայց
արդ գրեցի ձեզ չխառնակել, եթէ ոք
եղբայր անուանեալ կամ պոռնիկ իցէ
կամ կռապաշտ կամ ագահ կամ բամ-
բասող կամ արբեցող կամ յափշտա-
կող, ընդ այնպիսումն եւ հաց մի՛
12 ուտել։ Զի՞ կայ իմ եւ զարտաքինսն
դատելոյ. ո՞չ ապաքէն դուք զներ-
13 քինսն դատիցիք. Եւ զարտաքինսն
Աստուած դատիցի. բարձէք զչարն
ի միջոյ ձերմէ։

Գլ· Զ

1 Իշխէ՞ ոք ի ձէնջ, եթէ իրք ինչ իցեն
ընդ ընկերի իւրում, դատել առաջի
2 անիրաւաց, եւ ոչ առաջի սրբոց։ Եթէ
ո՞չ գիտէք զի սուրբք զաշխարհ զա-
տին եւ եթէ ձեւք դատի աշխարհ, ա-
պա [4]ոչ էք արժանի անարգ ատենից՞։
3 Ո՞չ գիտէք եթէ զհրեշտակս դատիմք,
4 թող թէ զերկրաւորս։ Զերկրաւոր
ատեանս եթէ յանձն առնուցուք, [5]զա-
նարգս եկեղեցւոյ զատաւորս նստու-
5 ցանէք՞։ Առ ամօթոյ ձերոյ ասեմ.
այնչափ ո՞չ գոյ ոք իմաստուն ի ձեզ,
որ կարիցէ իրաւունս ընտրել ի մէջ
6 եղբօր իւրոյ. Այլ եղբայր ընդ եղբօր
դատի, եւ զայն՝ ի մէջ անհաւատից։
7 Եւ արդ ամենեւին իսկ վատթարու-
թիւն է ի ձեզ, զի դատաստանք իսկ
գոն ի միջի ձերում. ընդէ՞ր ոչ դուք
զրկիք, եւ ոչ դուք առաւել նեղիք։
8 Այլ դուք զրկէք եւ նեղէք. եւ այդ՝
9 զեղբարս եւս։ Եթէ ո՞չ գիտէք զի ա-
նիրաւք զարքայութիւն Աստուծոյ ոչ
ժառանգեն. մի՛ խաբիք, ոչ պոռնիկք,
10 ոչ կռապաշտք, ոչ շունք, Ոչ իգա-
ցեալք, ոչ արուագէտք, ոչ գողք, ոչ
ագահք, ոչ արբեցողք, ոչ բամբասողք

[1] Ոմն․, եղիջիք, որպէս և ես Քրիստոսի
[2] Յոյն․, սիրով և հոգւով հեզութեան
[3] Ի Յոյնն պակաս
[4] Յոյն․, ո՞չ էք արժանի զանարգս դատելոյ
[5] Յոյն․, զանարգս յեկեղեցւոջ, զնոսա՞ նստու-
ցանէք, Լտ․, զնոսա նստուցէք

եւ ոչ յափշտակողք զարքայութիւն
11 Աստուծոյ ոչ ժառանգեն։ Եւ դուք
այնպիսիք ոմանք էիք. այլ լուացա-
րուք, այլ սրբեցարուք, այլ արդարա-
ցարուք յանուն Տեառն մերոյ Յիսու-
սի Քրիստոսի եւ ի Հոգին Աստուծոյ
մերոյ։
12 Գ.Կ. Ամենայն ինչ ինձ մարթ է, այլ
ոչ ամենայն ինչ օգուտ է. ամենայն
ինչ ինձ մարթ է, այլ ոչ եթէ ես ընդ
13 իշխանութեամբ ուրուք լինիցիմ։ Կե-
րակուր՝ որովայնի, եւ որովայն՝ կե-
րակրոյ. այլ Աստուած զսա եւ զնոսա
խափանեսցէ. բայց մարմին ոչ պոռնը-
կութեան, այլ՝ Տեառն, եւ Տէր՝ մարմ-
14 նոյ։ Այլ Աստուած որ եւ զՏէրն յա-
րոյց՝ եւ [1]զձեզ յարուսցէ զօրութեամբ
15 իւրով։ Ո՞չ գիտէք եթէ մարմինք ձեր
անդամք են Քրիստոսի. արդ առեալ
զանդամս Քրիստոսի՝ առնիցեմք ան-
16 դամս պոռնկի՞. քաւ լիցի։ Եթէ ո՞չ
գիտէք, զի որ մերձենայ ի պոռնիկ՝
մի մարմին է. Եղիցին, ասէ, երկոքին
17 ի մարմին մի։ Եւ որ մերձենայ ի Տէր՝
18 մի հոգի է։ Փախերուք ի պոռնկու-
թենէ. զամենայն մեղս զոր եւ գործէ
մարդ, արտաքոյ մարմնոյ իւրոյ է. իսկ
որ պոռնկին՝ յիւր մարմինն մեղանչէ։
19 Եթէ ո՞չ գիտէք, զի մարմինք ձեր
տաճար են [2]Հոգւոյն որ է ի ձեզ, զոր
ունիքն յԱստուծոյ, եւ չէք անձանց
20 տէր։ Քանզի գնոց գնեցայք. փառաւոր
արարէք զԱստուած ի մարմինս ձեր[3]։

## ԳԼ. Է

1 Այլ վասն որոյ գրեցէքն առ իս, բար-
ւոք է մարդոյ ի կին մարդ չմերձենալ։
2 Բայց վասն պոռնկութեան իւրաքան-
չիւր ոք զիւր կին կալցի, եւ իւրա-
քանչիւր ոք կին զիւր այր կալցի։
3 Կնոջ այր իւր զպարտսն հատուսցէ,
4 նոյնպէս եւ կինն՝ առն իւրում։ Զի
կին մարմնոյ իւրում ոչ իշխէ, այլ
այրն. նոյնպէս եւ այրն իւրում մարմ-
5 նոյ ոչ իշխէ, այլ կինն։ Մի՛ զրկէք
զմիմեանս, բայց եթէ ինչ ի միաբա-
նութենէ առ ժամանակ մի, զի [4]ուխ-
տիցն պարապիցէք, եւ դարձեալ ի նոյն
դարձջիք, զի մի՛ փորձեսցէ զձեզ Սա-
տանայ վասն անխառնութեան ձերոյ։
6 Զայս ասեմ ներելով եւ ոչ հրաման
7 տալով։ Քանզի կամիմ եթէ ամենայն
մարդ լինէր իբրեւ զիս. այլ իւրա-
քանչիւր ոք զիւր շնորհս ունի յԱս-
տուծոյ, ոմն այսպէս՝ եւ ոմն այնպէս։
8 Բայց ամուրեացն եւ այրեացն ասեմ,
Լաւ է նոցա եթէ կայցեն իբրեւ զիս։
9 Ապա թէ ոչ ունիցին ժոյժ, ամուս-
նասցին, զի լաւ է ամուսնանալ քան
10 զջեռնուլ։ Այլ կանամբեացն պատ-
ուիրեմ ոչ ես, այլ Տէր, կնոջ յառնէ
11 մի՛ մեկնել. Ապա եթէ մեկնեսցի, ան-
այր մնասցէ կամ անդրէն ընդ առն
իւրում հաշտեսցի, եւ առն զկին իւր
մի՛ թողուլ։ ՎԶ
12 Բայց այլոց ես պատուիրեմ, ոչ եթէ
Տէր. Եթէ ոք եղբայր կին ունիցի ան-
հաւատ, եւ նմա հաճոյ իցէ բնակել
13 ընդ նմա, մի՛ թողցէ զնա։ Եւ կին
որ ունիցի այր անհաւատ, եւ նմա
կամ իցէ բնակել ընդ նմա, մի՛ թողցէ
14 զայրն. Զի սուրբ է այրն անհաւատ՝
կնաւն, եւ սուրբ է կինն անհաւատ՝
արամբն. ապա թէ ո՛չ որդիքն ձեր
15 պիղծ են, բայց այժմ սուրբ են։ Ապա
եթէ անհաւատն մեկնիցի, մեկնեսցի.
զի ոչինչ հարկ ի վերայ կայ եղբօրն
կամ քեռն յայնպիսի իրս, քանզի ի խա-
ղաղութիւն կոչեաց զմեզ Աստուած։
16 Զի՞ գիտես, կին դու, եթէ զայր քո
ապրեցուցես. կամ զի՞ գիտես, այր
դու, եթէ զկին քո ապրեցուցես.
17 Եթէ ոչ՝ իւրաքանչիւր ումեք որպէս
եւ բաժանեաց Տէր, զիւրաքանչիւր ոք
որպէս եւ կոչեաց Աստուած՝ այնպէս
գնասցէ. եւ այսպէս ընդ ամենայն ե-
կեղեցիս պատուէր տամ։
18 Թլփատեա՞լ ոք կոչեցաւ, մի՛ ցան-
կասցի անթլփատութեան. յանթլփա-
տութենէ՞ ոք կոչեցաւ, մի՛ թլփա-
19 տեսցի. Զի թլփատութիւն ոչինչ է,
եւ անթլփատութիւն՝ ոչինչ, այլ՝ պահ-
պանութիւն Աստուծոյ պատուիրա-
20 նացն։ Բայց իւրաքանչիւր ոք յոր կո-
21 չումն կոչեցաւ՝ ի նմին կացցէ։ Ծառա՞յ
կոչեցար, մի՛ փոյթ լիցի քեզ. այլ թէ
կարիցես եւս ազատ լինել, քեզ այնպէս
22 լաւ իցէ։ Զի որ ի Տէր կոչեցեալ իցէ
ծառայն՝ ազատ Տեառն է. նոյնպէս եւ

---

[1] Բազումք, զմեզ
[2] Յոյնն, Հոգւոյն Սրբոյ
[3] Ոմանք յաւելուն, և յոգիս ձեր որ են Աստուծոյ
[4] Յոյնն, աղօթից. ոմանք, աղօթից և պահոց

որ ազատն կոչեցեալ է՝ ծառայ Քրիս-
23 տոսի է։ Գնոց գնեցայք, մի՛ լինիք
24 ծառայք մարդկան։ Իւրաքանչիւր յոր
կոչումն կոչեցաւ, եղբարք, ի նմին
կացցէ առաջի Աստուծոյ։
25 Գ.Գ. Այլ վասն կուսանաց հրաման
ինչ ի Տեառնէ ոչ ունիմ, բայց խրատ
տամ [1]որպէս ողորմելոյ ուրուք՝՝ ի
26 Տեառնէ հաւատարիմ լինել։ Համա-
րիմ թէ այնպէս [2]լաւ իցէ, բայց վասն
վտանգին՝՝ որ ի վերայ կայ, [3]բարւոք է
27 մարդոյ թէ այնպէս իցէ։ Կապեա՞լ ես
ի կին, մի՛ խնդրեր արձակել. արձա-
կեա՞լ ես ի կնոջէ, մի՛ խնդրեր կին։
28 Զի եթէ ամուսնանայցես, ոչ մեղար.
եւ եթէ ամուսնանայցէ կոյսն, ոչ մե-
ղաւ, բայց նեղութիւն մարմնոյ ունի-
ցին այնպիսիքն. այլ ես խնայեցի ի
29 ձեզ։ Բայց զայս ասեմ, եղբարք, եթէ
ժամանակս [4]կարճեալ է այսուհետեւ.
զի՝՝ որ ունիցին կանայս՝ որպէս թէ
30 չունիցին, Եւ որ լայցենն՝ որպէս թէ
ոչ լայցեն, եւ որ խնդանն՝ որպէս թէ
ոչ խնդայցեն, եւ որ գնենն՝ որպէս թէ
31 չունիցին, Եւ որ վարեն զաշխարհս՝
որպէս թէ չվայելիցեն. զի անցեալ է
վայելչութիւն աշխարհիս այսորիկ։
32 Այլ կամիմ զձեզ անհոգս լինել. զի որ
անկինն է՝ հոգայ զՏեառն, թէ ո՛րպէս
33 հաճոյ լիցի Տեառն. Եւ որ կանամբին
է, հոգայ զաշխարհիս, թէ ո՛րպէս հա-
34 ճոյ լիցի կնոջ իւրում։ Եւ ահա մեկ-
նեցան ի միմեանց առնակինն եւ կոյսն.
զի կոյսն հոգայ զՏեառն, զի իցէ սուրբ
մարմնով եւ հոգւով, եւ առնակինն
հոգայ զաշխարհիս, թէ ո՛րպէս հաճոյ
35 լիցի առն իւրում։ Այլ զայս վասն
ձերոյ օգտի ասեմ. ոչ եթէ խեղդ ինչ
արկանեմ ձեզ, այլ վասն պարկեշտու-
թեան եւ հպատակութեան Տեառն ա-
ռանց զբաղմանց։
36 Գ.Զ. Ապա թէ ոք ամօթ համարեսցի
վասն կուսին իւրոյ, եթէ իցէ ելեալ
ըստ չափ, եւ այնպէս ինչ պարտ իցէ
լինել. զոր կամի արասցէ, ոչ մեղան-
37 չէ, [5]ամուսնասցի։ Իսկ որ հաստատ-
եալ է ի սրտի իւրում, եւ վտանգ ինչ
ոչ իցէ նմա, իշխանութիւն ունի ի վե-
րայ կամաց իւրոց. եւ զայն ընտրեաց
ի սրտի իւրում՝ պահել զկոյսն իւր,
38 բարւոք առնէ։ Եւ որ ամուսնացու-
ցանէ [6]զկոյսն իւր՝՝ բարւոք առնէ. եւ
որ ոչն ամուսնացուցանէ՝ լաւ եւս
39 առնէ։ Կին [7]կապեալ է՝՝, ցորքան ժա-
մանակս կենդանի է այր նորա. ապա
եթէ ննջեսցէ այր նորա, ազատ է, ում
կամիցի ամուսնանալ, բայց միայն Տե-
40 րամբ։ Բայց երանելի եւս է թէ այն-
պէս կացցէ ըստ իմում խրատու. ես
այսպէս համարիմ թէ եւ յիս իցէ Հոգի
Աստուծոյ։

## ԳԼ. Ը

1 Այլ վասն զոհից կռոցն, գիտեմք եթէ
ամենեքին գիտութիւն ունիմք. գի-
տութիւն հպարտացուցանէ, այլ սէր
2 շինէ։ Եթէ ոք [8]կամիցի գիտել ինչ,
չեւ եւս գիտաց որպէս արժան է գի-
3 տել։ Բայց որ սիրէ զԱստուած, նա է
4 տեղեկացեալ ի նմանէ։ Այլ վասն կե-
րակրոցն զոհելոց գիտեմք եթէ ոչինչ
իսկ կուռքդ են յաշխարհի, զի չիք ոք
5 Աստուած բաց ի միոյն։ Զի թէպէտ
եւ իցեն անուանեալ աստուածք եթէ
յերկինս եւ եթէ յերկրի, որպէս եւ են
աստուածք բազումք եւ տեարք բա-
6 զումք։ Այլ մեզ մի է Աստուած, Հայր,
յորմէ ամենայն, եւ մեք ի նա. եւ մի
Տէր Յիսուս Քրիստոս՝ որով ամենայն,
եւ մեք նովաւ։ Վ.Զ.
7 Այլ ոչ յամենեսեան գիտութիւն է.
ոմանք առ խղճի մտաց մինչեւ ցայժմ
զկռոցն իբրեւ զզոհեալ ուտեն. եւ
խիղճ մտաց նոցա, քանզի տկար է,
8 պղծի։ Այլ կերակուր զմեզ առաջի
Աստուծոյ ոչ կացուցանէ. ոչ եթէ չու-
տեմք, պակասեմք ինչ, եւ ոչ եթէ
9 ուտեմք, առաւելումք ինչ։ Բայց զգոյշ
լերուք, գուցէ իշխանութիւնդ ձեր այդ
գայթակղութիւն լինիցի տկարացն։
10 Եթէ ոք տեսանիցէ զքեզ որ զգիտու-
թիւնդ ունիս՝ բազմեալ ի մեհենի, ո՞չ
ապաքէն խիղճ մտաց նորա որ տկա-
րութեամբն զգածեալ է՝ անդրէն չի-
11 նիցի ուտել զզոհեալսն. Եւ կորնչիցի

[1] Յոյնն, որպէս ողորմեալ ոք
[2] Յոյնն, լաւ իցէ վասն վտանգին
[3] Յոյնն, զի բարւոք
[4] Կամ, կարճեալ է. այսուհետեւ
[5] Յոյնն, ամուսնասցին

[6] Յօրին. [illegible]
[7] Ոմանք, կապեալ է օրինօք
[8] Յոյնն, համարիցի

տկա՛ր եղբայրն ի քում գիտութեանդ,
12 վասն որոյ Քրիստոսն մեռաւ ։ Եւ այն-
պէս յանցուցեալ յեղբարս, եւ զխիղճ
մտաց տկարացն զայրացուցեալ, ի
13 Քրիստոս մեղանչէ ։ Վասն որոյ եթէ
կերակուր գայթակղեցուցանէ զեղ-
բայրն իմ, ոչ կերայց միս յաւիտեան,
զի մի՛ զեղբայրն իմ գայթակղեցուցից ։

Գլ. Թ

1 Ո՞չ ապաքէն ազատ եմ, ո՞չ ապաքէն
առաքեալ եմ, ո՞չ ապաքէն զՏէր մեր
Յիսուս Քրիստոս [1]աչօք իմովք" տեսի,
ո՞չ ապաքէն գործ իմ դուք էք ի Տէր ։
2 Թէպէտ եւ այլոց չիցեմ առաքեալ, այլ
զէպ ձեզ եմ. զի կնիք իսկ առաքե-
3 լութեան իմոյ դուք էք ի Տէր ։ Իմ
պատասխանի, ուր զիս հարցանիցեն,
4 այս է. Միթէ ո՞չ ունիցիմք իշխանու-
5 թիւն ուտել եւ ըմպել ։ Միթէ ո՞չ ու-
նիցիմք իշխանութիւն [2]զքորս կանայս"
շրջեցուցանել [1]ընդ մեզ". որպէս եւ
այլ առաքեալքն եւ եղբարքն Տեառն
6 եւ Կեփաս ։ Եթէ միայն ես եւ Բառ-
նաբա՞ս ոչ ունիցիմք իշխանութիւն
7 չգործել ինչ ։ Ո՞ ոք երբեք զինուորիցի
իւրովք թոշակօք. ո՞ ոք տնկիցէ այգի,
եւ ի պտղոյ նորա ոչ ուտիցէ. ո՞ ոք
արածիցէ խաշն, եւ ի կաթանէ խա-
8 շինն ոչ ուտիցէ ։ Միթէ ըստ մարդ-
կութեա՞ն խօսիցիմ զայս. կամ թէ եւ
9 օրէնքն զսոյն ո՞չ ասիցեն ։ Ի Մովսիսի
իսկ յօրէնսն գրեալ է, Ոչ կապեսցես
զցռուկ եզին կալոտւոյ. միթէ զե-
10 զա՞նց ինչ փոյթ էր Աստուծոյ ։ Ո՞չ ա-
պաքէն վասն մեր ասէ, քանզի վասն
մեր գրեցաւ. զի յուսով պարտի որ
սերմանէն՝ սերմանել, եւ որ կասուն՝
11 յուսով վայելել ։ Եթէ մեք ի ձեզ զհո-
գեւորսն սերմանեցաք, մեծ ի՞նչ է եթէ
12 ի ձէնջ զմարմնաւորսդ հնձիցեմք ։ Եթէ
այլք ձերով իշխանութեամբդ վայելեն,
ո՞չ առաւել եւս մեք. այլ ոչ ի գործ
ինչ արկաք զիշխանութիւնս զայս.
բայց ամենայնի համբերեմք, զի մի՛
խափան ինչ լինիցիմք [3]աւետարանին ։
13 Ո՞չ գիտէք, եթէ որ ի տաճարին գոր-
ծեն՝ ի տաճարէ անտի ուտեն. եւ որ
սեղանոյն պաշտօնեայք են՝ ի սեղանոյ
14 անտի վայելեն ։ Նոյնպէս եւ Տէր հրա-
ման ետ որոց զաւետարանն աւետա-
րանեն՝ յաւետարանէ անտի կեալ ։
15 Բայց ես եւ ոչ զմի ինչ յայսցանէ արկի
ի գործ, եւ ոչ գրեցի զայդ զի ինձ
այսպէս ինչ լինիցի. լաւ է ինձ մա-
հուանդ մեռանել, եւ ոչ զի զպար-
ծանս իմ ոք ընդունայն համարիցի ։
16 Զի եթէ աւետարանեմ, ոչինչ են ինձ
պարծանք, քանզի հարկ ի վերայ կայ.
բայց վա՜յ է ինձ՝ եթէ ոչ աւետարանեմ ։
17 Եթէ կամաւ զայն առնեմ, վարձք են
ինձ. եւ եթէ ակամայ՝ տնտեսութիւն
18 յանձն է ինձ ։ Եւ արդ զի՞նչ վարձք
իցեն ինձ. [4]եթէ յաւետարանելն ձրի
տաց [5]զաւետարանն՝ զի մի՛ զեղծիցիմ
ինչ իշխանութեամբս իմով յաւետա-
19 րանի անդ ։ Քանզի ազատ էի յամե-
նայնէ, եւ ամենեցուն զանձն ի ծա-
ռայութեան կացուցի, զի զբազումս
20 շահեցայց ։ Եղէ ընդ Հրեայսն իբրեւ
21 զՀրեայ, զի զՀրեայսն շահեցայց ։ Եղէ
ընդ օրինօք իբրեւ զայնոսիկ որ ընդ
օրինօքն էին, [6]իբր ոչ եթէ ընդ օրի-
նօքն էի, այլ" զի որ ընդ օրինօքն
իցեն՝ եւ զնոսա շահեցայց. ընդ անօ-
րէնս եղէ իբրեւ զանօրէն, իբր ոչ եթէ
անօրէն ինչ էի Աստուծոյ, այլ ընդ օ-
րինօքն Քրիստոսի, զի շահեցայց զանօ-
22 րէնսն ։ Եղէ ընդ տկարս իբրեւ զտկար,
զի զտկարսն շահեցայց. ընդ ամենայնի
ամենայն եղէ, զի թերեւս ապրեցուցից
23 զոմանս ։ Զայս ամենայն առնեմ վասն
աւետարանին, զի կցորդ եղէց նմա ։
24 Դկ. Ո՞չ գիտէք եթէ որ յասպարիսին
ընթանան, ընթանայ ամենեքին ըն-
թանան, բայց մի ոք առնու զյաղ-
թութեանն. այնպէս ընթացարուք զի
25 հասանիցէք ։ Ամենայն որ պատերազմի՝
ամենայնի ժուժկալ լինի. նոքա զի
զեղծանելի պսակն առնուցուն, եւ
26 մեք զանեղծութեանն ։ Արդ ես իսկ
այնպէս ընթանամ, ոչ որպէս յանե-
րեւոյթս. այնպէս մրցիմ, որպէս ոչ
27 թէ զհողմս ինչ կոծելով. Այլ ճնշեմ
զմարմինս իմ եւ հնազանդեցուցանեմ,
զի գուցէ որ այլոցն քարոզեցի՝ ես
ինքն անպիտան գտանիցիմ ։

[1] Ի Յունէն պակասէ
[2] Ոմանք, քոյր կին
[3] Յոմն., աւետարանին Քրիստոսի
[4] Կամ, այն՝ զի
[5] Ոմանք, զաւետարանն Քրիստոսի
[6] Յոմանս պակասէ

## Գլ. Ժ

1 Ոչ կամիմ եթէ տգէտ իցէք, եղբարք,
զի հարքն մեր ամենեքին ընդ ամպովն
էին, եւ ամենեքին ընդ ծովն անցին.
2 Եւ ամենեքեան ի Մովսէս մկրտեցան
3 յամպն եւ ի ծովն. Եւ ամենեքին զնոյն
4 զհոգեւոր զկերակուրն կերան. Եւ
ամենեքին զնոյն զհոգեւոր ըմպելին
արբին, զի ըմպէին ի հոգեւոր վիմէն
որ երթայր զհետ նոցա. եւ վէմն էր
5 ինքն Քրիստոս։ Այլ ոչ եթէ ընդ բա-
զումս ի նոցանէ հաճեցաւ Աստուած,
քանզի տապաստ անկան յանապատի
6 անդ։ Եւ այն՝ օրինակաւ լինէր վասն
մեր, զի մի՛ լիցուք ցանկացողք չար-
7 եաց, որպէս Նոքայն ցանկացան։ Եւ
մի՛ կռապաշտք լինել որպէս ոմանք
ի նոցանէ, որպէս եւ գրեալ է, Նստաւ
ժողովուրդն ուտել եւ ըմպել եւ յար-
8 եան ի խաղալ։ Եւ մի՛ պոռնկեսցուք,
որպէս ոմանք պոռնկեցան ի նոցանէ,
եւ անկան ի միում աւուր քսան եւ
9 [1]չորք հազարք։ Եւ մի՛ փորձեսցուք
[2]զՏէր, որպէս ոմանք ի նոցանէ փոր-
ձեցին, եւ յօձից անտի սատակեցան։
10 Եւ մի՛ տրտնջեսցուք, որպէս ոմանք
ի նոցանէ տրտնջեցին, եւ կորեան ի
11 սատակչէ անտի։ Այլ այն ամենայն
օրինակաւ անցանէր ընդ նոսա. բայց
գրեցաւ վասն մերոյ խրատու, յորս
վախճանք յաւիտեանցն եհաս։
12 Դդ. Այսուհետեւ որ համարիցի հաս-
տատուն կալ՝ զգոյշ լիցի, զուցէ ան-
13 կանիցի։ Փորձութիւն ի ձեր վերայ
ոչ է եկեալ բայց [3]ի մարդկանէ. այլ
հաւատարիմ է Աստուած որ ոչ արկցէ
զձեզ ի փորձութիւն առաւել քան զկար
ձեր, այլ արասցէ ընդ փորձութեանն
եւ զելսն, զի համբերել կարասջիք։
14 Վասն որոյ, սիրելիք իմ, փախերուք
15 ի կռապաշտութենէ։ Իբրեւ ընդ իմաս-
տունս խօսիմ. ընտրեցէք ձեզէն զոր
16 ասեմս։ Բաժակն օրհնութեան զոր
օրհնեմք՝ ո՞չ ապաքէն հաղորդութիւն
է արեանն Քրիստոսի. հացն զոր բե-
կանեմք՝ ո՞չ ապաքէն հաղորդութիւն
17 է մարմնոյն Քրիստոսի։ Զի մի հաց,
մի մարմին եմք բազումքս, զի ամե-
նեքին ի միոջէ հացէ անտի վայելեմք։
18 Տեսէք զԻսրայէլն ըստ մարմնոյ. ո՞չ
ապաքէն որ ուտեն ի զոհիցն՝ հաղորդք
19 են սեղանոյն։ Իսկ արդ զի՞նչ ասեմ,
թէ զոհեալն իցէ՞ ինչ. եւ կամ կուռքն
20 իսկ իցե՞ն ինչ։ Այլ զոր զոհենն հե-
թանոսք, դիւաց եւ ոչ Աստուծոյ զո-
հեն. ոչ կամիմ զձեզ հաղորդս դիւաց
լինել. քանզի ոչ կարէք զբաժակն
Տեառն ըմպել եւ զբաժակն դիւաց.
21 Եւ ոչ կարէք ի սեղանոյ Տեառն վա-
22 յելել եւ ի սեղանոյ դիւաց։ Եթէ նա-
խա՞նձ ինչ արկանիցեմք Տեառն, միթէ
զօրագո՞յնք իցեմք քան զնա։
23 Ամենայն ինչ ինձ մարթ է, այլ ոչ
ամենայն ինչ օգուտ է. ամենայն ինչ
ինձ մարթ է, այլ ոչ ամենայն ինչ շինէ։
24 Մի՛ ոք զանձին եւեթ խնդրեսցէ, այլ եւ
25 զընկերին։ Ամենայն ինչ որ ի սպան-
դանոցի վաճառի՝ կերայք, եւ մի՛ խըտ-
26 րէք վասն խղճի մտաց. Զի Տեառն է
երկիր լրիւ իւրով։ ՎԶ
27 Եթէ ոք կոչեսցէ զձեզ յանհաւատից
եւ կամիցիք երթալ, զամենայն ինչ որ
առաջի դնիցի, կերայք եւ մի՛ խտրէք
28 վասն խղճի մտաց։ Ապա եթէ ոք ա-
սասցէ ձեզ թէ Այդ զոհեալ է, մի՛ ու-
տիցէք վասն նորա որ ցուցակն եղեւ,
29 եւ վասն խղճի [4]մտացն։ Այլ զխիղճ
մտացն ասեմ՝ ոչ զիւրն, այլ զընկե-
րին. իսկ ընդէ՞ր բնաւ ազատութիւնս
30 իմ դատիցի յայլոյ խղճէ մտաց։ Եթէ
ես [5]շնորհօք վայելեմ, ընդէ՞ր հայհոյի-
31 ցիմ, վասն որոյ ես գոհանամ։ Արդ
եթէ ուտիցէք, եթէ ըմպիցէք, եթէ
զինչ եւ գործիցէք, զամենայն ինչ ի
32 փառս Աստուծոյ արասջիք։ Առանց
գայթակղութիւն գնկալ·Հրէից եւ հե-
թանոսաց լինիջիք եւ եկեղեցւոյն Աս-
33 տուծոյ։ Որպէս եւ ես ամենեւին ա-
մենեցուն հաճոյ լինիմ, ոչ խնդրեմ
զանձին օգուտ, այլ զբազմաց՝ զի ապ-
րեսցին։

## Գլ. ԺԱ

1 Նմանողք ինձ եղերուք, որպէս եւ
ես Քրիստոսի։

---

[1]Յաւելուած, երեք
[2]Ոմանք, զՔրիստոս
[3]Յոյն., մարդկեղէն

[4]Ոմանք, մտացն, զի Տեառն է երկիր լրիւ իւրով
[5]Կամ, շնորհակալութեամբ

2 ԴՁ․ Գովեմ [1]զձեզ զի զամենայն ինչ
զիմ յիշէք, եւ որպէս աւանդեցի ձեզ,
3 զաւանդութիւնսն ունիցիք։ Կամիմ
զի գիտիցէք դուք, եթէ առն ամե-
նայնի գլուխ Քրիստոս է, եւ գլուխ
կնոջ՝ այր, եւ գլուխ Քրիստոսի՝ Ա-
4 տուած։ Ամենայն այր յորժամ յա-
ղօթս կայցէ կամ մարգարէանայցէ եւ
զգլուխն ծածկեալ ունիցի, յամօթ
5 առնէ զգլուխն իւր։ Եւ ամենայն կին
յորժամ յաղօթս կայցէ կամ մարգա-
րէանայցէ բացա գլխով, յամօթ առնէ
զգլուխն իւր, զի այնպէս համարէ թէ
6 գերծեալ իցէ։ Զի եթէ ոչ սքողեսցի
կին, փոքրեսցէ զհերս իւր․ ապա եթէ
անպատեհ է կնոջ փոքրել կամ գեր-
7 ծուլ, սքողեսցի։ Առն մարդոյ չէ պարտ
ծածկել զգլուխ իւր, զի պատկեր եւ
փառք Աստուծոյ է․ իսկ կին փառք
8 առն իւրոյ է։ Զի ոչ եթէ այր ի կնոջէ
9 է, այլ կին՝ յառնէ։ Քանզի ոչ իսկ
հաստատեցաւ այր վասն կնոջ, այլ՝ կին
10 վասն առն։ Վասն այնորիկ պարտի
կինն [2]շուք դնել գլխոյն վասն հրեշ-
11 տակաց։ Բայց ոչ կին՝ առանց առն,
12 եւ ոչ այր՝ առանց կնոջ ի Տէր։ Զի
որպէս կին յառնէ, նոյնպէս եւ այր՝
ի կնոջէ, բայց ամենայն՝ յԱստուծոյ։
13 Այլ դուք ձեզէն տուք զիրաւդ․ ար-
ժա՞ն է կնոջ մարդոյ հոլանի յաղօթս
14 կալ առաջի Աստուծոյ։ Եւ ո՞չ բնու-
թիւնն իսկ ուսուցանէ զձեզ, զի այր,
եթէ գիսաւոր է, անարգանք են նմա․
15 Բայց կին, եթէ գիսաւոր է, փառք են
նմա․ զի գէսք փոխանակ զգեստու-
16 տուեալ են նմա։ Ապա թէ ոք կամի
հակառակող լինել, մեք չունիմք այն-
պիսի սովորութիւն, եւ ոչ եկեղեցիքն
Աստուծոյ։ ՎՁ
17 Այլ զայս պատուիրեմ, ոչ որպէս
թէ գովիցեմ, զի ոչ ի լաւ անդր՝ այլ
18 ի վատթարն [3]նկրտիք։ Նախ՝ յորժամ
ի մի վայր ժողովիցիք յեկեղեցին, լսեմ
եթէ հերձուածք գոն ի ձեզ, եւ սակաւ
19 ինչ հաւատացի։ Բայց եւ հերձուածք
լինելոց են ի ձեզ, զի որ ընտիրքն ի-
20 ցեն ի ձեզ՝ երեւեսցին։ Եւ արդ ի ժո-
ղովելն ձեզ ի միասին՝ [4]ոչ է տուն
21 Տեառն ձեզ տեղի հաց ուտելոյ՞։ Զի
իւրաքանչիւր ոք զիւր ընթրիս յա-
ռաջանայ ուտել․ եւ ոմն քաղցեալ՝ եւ
22 ոմն արբեալ։ Միթէ տունս ո՞չ ունի-
ցիք ուտելոյ եւ ըմպելոյ․ եթէ զեկե-
ղեցեա՞ւն Աստուծոյ արհամարհիցէք,
եւ յամօթ առնէք զչքաւորսն․ զի՞նչ
[5]ասացից․ գովեցի՞ց [6]զձեզ յայդմ․ ո՛չ
23 գովեմ։ Զի ես ընկալայ ի Տեառնէ,
զոր եւ ձեզն աւանդեցի, եթէ Տէր Յի-
սուս ի գիշերին յորում մատնէր, առ
24 հաց․ Գոհացաւ, եբեկ եւ [7]ասէ, Այս՛
է իմ մարմինն, որ վասն [8]ձեր․ զայս
25 արարէք առ իմոյ յիշատակի։ Նոյնպէս
եւ զբաժակն յետ ընթրեացն [9]առ եւ՛
ասէ, Այս բաժակ նոր ուխտ է իմով
արեամբ․ զայս արարէք քանիցս ան-
գամ թէ ըմպիցէք, առ իմոյ յիշատակի։
26 Քանիցս անգամ թէ ուտիցէք զհացս
զայս եւ զբաժակս ըմպիցէք, զմահն
Տեառն պատմիցէք, մինչեւ եկեսցէ
27 նա։ Այսուհետեւ որ ուտիցէ զհացս,
կամ ըմպիցէ զբաժակս Տեառն անար-
ժանութեամբ, պարտական եղիցի
28 մարմնոյ եւ արեանն Տեառն։ Փորձես-
ցէ մարդ զանձն իւր, եւ ապա ի հացէ
անտի կերիցէ եւ ի բաժակէն արբցէ։
29 Զի որ ուտէ եւ ըմպէ [10]անարժանու-
թեամբ՝ դատաստանս անձին իւրում
ուտէ եւ ըմպէ, զի ոչ խտրէ զմար-
30 մինն [10]Տեառն։ Վասն այնորիկ իսկ են
ի ձեզ բազում հիւանդք եւ ախտա-
ժէտք, եւ չատ եւս այն են որ եւ
31 ննջեցեալքն իսկ իցեն։ Զի եթէ զան-
ձինս քննէաք, ապա ոչ դատապար-
32 տէաք։ Եւ եթէ դատիմք, ի Տեառնէ
խրատիմք․ զի մի՛ ընդ աշխարհի դա-
33 տապարտեսցուք։ Այսուհետեւ, եղ-
բարք, յորժամ ի մի վայր ժողովիցիք
34 ուտել, միմեանց մնասջիք։ Ապա թէ
ոք քաղցեալ իցէ, ի տան իւրում կե-
րիցէ, զի մի՛ ի դատապարտութիւն
ժողովիցիք։ Բայց զայլ ինչ, յորժամ
եկից, յայնժամ պատուիրեցից։

[1] Ոմն+, զձեզ, եղբարք,
[2] Յոյնն, իշխանութիւն
[3] Յոյնն, ժողովիք
[4] Յոյնն, ոչ է զՏէրունական ընթրիսն ուտել
[5] Յոյնն, ասացից ձեզ
[6] Ոմն+, զձեզ․ յայդմ ոչ
[7] Ոմն+, ասէ, Առէք կերայք, այս
[8] Ոմն+, ձեր բեկանի
[9] Ի Յունին պակասէ
[10] Յոմանս պակասէ

## Գլ. ԺԲ

1 ԵԿ. Այլ վասն հոգեւորացն, եղբարք,
2 ոչ կամիմ եթէ տգէտ իցէք: Գիտէք
իսկ զի մինչ հեթանոսքն էիք, առ
կուռսն անմռունչս որպէս երթայիք,
3 եւ գայիք: Վասն որոյ ցուցանեմ ձեզ,
զի ոչ ոք Հոգւով Աստուծոյ խօսի՝ եւ
ասիցէ եթէ Նզովեալ Յիսուս. եւ ոչ ոք
կարէ ասել Տէր զՅիսուս, եթէ ոչ
Հոգւովն Սրբով:
4 Թէպէտ եւ բաժինք շնորհաց են,
5 այլ Հոգի նոյն է: Եթէ բաժինք պաշ-
6 տամանց են, այլ Տէր նոյն է: Եթէ
բաժինք յաջողութեանց են, այլ Աս-
տուած նոյն է որ յաջողէ զամենայն
7 յամենայնի: Բայց իւրաքանչիւր ումեք
տուեալ է յայտնութիւն Հոգւոյն՝ [1]առ
8 իւրաքանչիւր օգուտ": Ումեմն ի Հոգ-
ւոյն տուեալ է բան իմաստութեան.
այլում՝ բան գիտութեան ըստ նմին
9 Հոգւոյ. Միւսումն հաւատք՝ նովին
Հոգւով. այլում շնորհք բժշկութեանց՝
10 նովին Հոգւով. Այլում՝ յաջողու-
թիւնք զօրութեանց, այլում՝ մարգա-
րէութիւն, այլում՝ ընտրութիւն հոգ-
ւոց, այլում՝ ազգք լեզուաց, այլում՝
11 թարգմանութիւն լեզուաց: Այլ զայս
ամենայն յաջողէ մի եւ նոյն Հոգի, եւ
բաժանէ իւրաքանչիւր որպէս եւ կամի:
12 ԵԴ. Որպէս մարմին մի է եւ անդամս
բազումս ունի, եւ ամենայն բազում
անդամք մարմնոյն մի մարմին է, նոյն-
13 պէս եւ Քրիստոս: Քանզի միով Հոգ-
ւով մեք ամենեքեան ի մի մարմին
մկրտեցաք, եթէ Հրեայք, եթէ հեթա-
նոսք, եթէ ծառայք, եթէ ազատք,
14 ամենեքին զմի Հոգի արբաք: Քանզի
մարմին ոչ մի անդամ է, այլ բազում:
15 Եթէ ասիցէ ոտն, Զի չեմ ձեռն, չեմ
ի մարմնոյ անտի, ոչ այնու չիցէ ի
16 մարմնոյ անտի: Եւ եթէ ասիցէ ունկն,
Վասն զի չեմ ակն, չեմ ի մարմնոյ
անտի, ոչ այնու չիցէ ի մարմնոյ ան-
17 տի: Եթէ ամենայն մարմինն ակն էր,
ո՞ւր էր ունկն. եւ եթէ ամենայն լսե-
18 լիք էին, ո՞ւր էին հոտոտելիք: Բայց
արդ Աստուած եդ զանդամսն, զմի
մի իւրաքանչիւր ի նոցանէ ի մարմնին,
19 որպէս եւ կամեցաւ: Ապա թէ էր ա-
մենայն մի անդամ, ո՞ւր էր մարմին:
20 Բայց արդ անդամք բազումք են, եւ
21 մարմին մի: Ոչ կարէ ակն ասել ցձեռն,
թէ Չես ինձ պիտոյ, եւ կամ դարձեալ
22 գլուխ ցոտսն թէ Չէք ինձ պիտոյ: Այլ
առաւել որ թուին անդամք մարմնոյն
թէ տկարագոյնք իցեն, կարեւորք են.
23 Եւ որ թուին թէ անարգագոյնք իցեն
մարմնոյն, այնց առաւելագոյն պատիւ
առնեմք. եւ ամօթոյքն մեր առաւել
24 եւս պարկեշտութիւն ունին: Եւ պար-
կեշտիցն մերոց չէ ինչ պիտոյ. քանզի
Աստուած խառնեաց զմարմինն. եւ
25 նուաղին առաւել եւս պատիւ ետ. Զի
մի՛ իցեն հերձուածք ի մարմնի անդ,
այլ զի նոյնք զմիմեանց հոգայցեն ան-
26 դամքն: Եւ եթէ վշտանայ ինչ մի ան-
դամն, վշտանան ամենայն անդամքն
ընդ նմա. եւ եթէ փառաւորի մի ան-
դամն, խնդան ամենայն անդամքն ընդ
27 նմա: Այլ դուք մարմին Քրիստոսի էք
եւ անդամք [2]յանդամոց նորա": ՎԶ.
28 Եւ զորս եդն Աստուած յեկեղեցւոջ՝
այս են. նախ զառաքեալս, երկրորդ
զմարգարէս, երրորդ զվարդապետս,
ապա զօրութիւնս, ապա շնորհս բժըշ-
կութեանց, օգնութիւնս, վարիչս,
ազգս լեզուաց, [3]թարգմանութիւնս
29 լեզուաց": Միթէ ամենեքի՞ն առա-
քեալք իցեն. միթէ ամենեքի՞ն մար-
գարէք իցեն. միթէ ամենեքի՞ն վար-
դապետք իցեն. միթէ ամենեքի՞ն զօ-
30 րութիւնք իցեն. Միթէ ամենեքի՞ն
շնորհս բժշկութեան ունիցին. միթէ
ամենեքի՞ն ի լեզուս խօսիցին. միթէ
ամենեքի՞ն թարգմանիցեն:
31 Բայց նախանձաւոր լերուք շնորհացն
որ լաւն են. այլ ես առաւել եւս ճա-
նապարհ ցուցանեմ ձեզ:

## Գլ. ԺԳ

1 ԵԶ. Եթէ զլեզուս մարդկան խօսիցիմ
եւ զհրեշտակաց, եւ սէր ոչ ունիցիմ,
եղէ ես իբրեւ զպղինձ որ հնչէ, կամ
2 իբրեւ զծնծղայս՝ որ զօղանջեն: Եւ
եթէ ունիցիմ զմարգարէութիւն, եւ
գիտիցեմ զխորհուրդս ամենայն եւ

[1]Յօյնն, յօգուտ

[2]Բազում, ուրոյն ուրոյն

[3]Ի Յոյնին պակաս

զամենայն գիտութիւն, եւ եթէ ու-
նիցիմ զամենայն հաւատս մինչեւ զլե-
րինս փոփոխելոյ, եւ սէր ոչ ունիցիմ,
3 ոչինչ եմ։ Եւ եթէ ջամբիցեմ զամե-
նայն ինչս իմ աղքատաց, եւ մատնի-
ցեմ զմարմինս իմ յայրումն, եւ սէր
4 ոչ ունիցիմ, ոչինչ օգտիմ։ Սէր եր-
կայնամիտ է, քաղցրանայ. սէր ոչ նա-
խանձի, ոչ ամբարհաւաճէ, ոչ հպար-
5 տանայ. Ոչ յանդգնի, ոչ խնդրէ զիւրն,
6 ոչ գրգռի, ոչ խորհի զչար. Ոչ խնդայ
ընդ անիրաւութիւն, այլ խնդայ ընդ
7 ճշմարտութիւն. Ամենայնի տանէ, ա-
մենայնի հաւատայ, [1]ամենեւին յու-
8 սայ, ամենայնի համբերէ։ Սէր ոչ եր-
բեք անկանի. եթէ մարգարէութիւնք
են, խափանեսցին, եթէ լեզուք՝ լռես-
ցեն, եթէ գիտութիւն՝ խափանեսցի։
9 Քանզի փոքր ի շատէ գիտեմք, եւ
10 փոքր ի շատէ մարգարէանամք։ Այլ
յորժամ եկեսցէ կատարումն, փոքր
ի շատէս խափանեսցի։
11 ԶԿ. Մինչ տղայն էի, իբրեւ զտղայ
խօսէի, իբրեւ զտղայ խորհէի, իբրեւ
զտղայ համարէի. այլ յորժամ եղէ այր,
զտղայութեանն ի բաց խափանեցի։
12 Այժմ տեսանեմք իբրեւ ընդ հայելի
օրինակաւ, այլ յայնժամ՝ դէմ յանդի-
ման. այժմ ճանաչեմ իմ փոքր ի շա-
տէ, այլ յայնժամ գիտացից, որպէս եւ
13 նայն ծանեաւ զիս։ Բայց արդ մնան
հաւատք, յոյս, սէր, սոքա երեքեան,
եւ մեծ քան զսոսա սէր է։

ԳԼ. ԺԴ

1 Զհետ երթայք սիրոյ, եւ նախանձա-
ւոր լերուք հոգեւորացն առաւել զի
2 եւ դուք մարգարէանայցէք։ Զի որ
խօսի ի լեզուս՝ ոչ ընդ մարդկան խօսի,
այլ՝ ընդ Աստուծոյ. զի ոչ ոք է որ լսէ,
3 բայց հոգւով խօսի խորհուրդս։ Իսկ
որ մարգարէանայն՝ մարդկան խօսի շի-
նութիւն եւ մխիթարութիւն եւ սփո-
4 փութիւն։ Որ խօսի ի լեզուս՝ զանձն
իւր շինէ. եւ որ մարգարէանայն՝
5 զեկեղեցին շինէ։ Կամիմ զի ամենե-
քին դուք ի լեզուս խօսիցիք, առաւել՝
զի մարգարէանայցէք, զի լաւ է որ
մարգարէանայն՝ քան զայն որ ի լե-
զուսն խօսիցի. բայց եթէ թարգմա-
նեսցէ, զի եկեղեցին շինութիւն առ-
նուցու։ ԿԶ
6 Բայց այժմ, եղբարք, եթէ եկից առ
ձեզ ի լեզուս խօսելով, զի՞նչ օգուտ լի-
նիցիմ ձեզ եթէ ոչ խօսիցիմ կամ յայտ-
նութեամբ կամ գիտութեամբ կամ
մարգարէութեամբ կամ վարդապե-
7 տութեամբ։ Այնպէս որպէս անշունչքն
ձայն տայցեն, եթէ՝ փող եւ եթէ՝ քնար,
զի եթէ ընտրութիւն ինչ բարբառոյն
չտայցեն, զիա՞րդ ճանաչիցի փողոյն
8 հարկանել կամ քնարին հնչել։ Քանզի
եթէ խառնաձայն արձակիցէ փողն, ո՞վ
9 պատրաստեսցի ի պատերազմ։ Նոյն-
պէս եւ դուք եթէ լեզուօք ոչ նշա-
նակիցէք զբանն, զիա՞րդ ճանաչիցին
խօսքն. զի լինիցիք այնուհետեւ իբրեւ
10 ընդ օդս խօսեցեալք։ Զի այնչափ ազգք
ձայնից են յաշխարհի, եւ ոչինչ է ան-
11 ձայն։ Իսկ արդ՝ եթէ ոչ գիտիցեմ
զզօրութիւն ձայնին, լինիցիմ այնմ որ
խօսիցին ընդ իս՝ խուժ, եւ նա որ խօ-
12 սիցին ընդ իս՝ զուժ։ Նոյնպէս եւ դուք
քանզի նախանձորդք էք հոգեւորացն.
վասն շինածոյ եկեղեցւոյն՝ [2]խնդրէք
13 զի առաւել եւս իցէք։ Վասն որոյ որ
խօսին ի լեզուս՝ աղօթս արասցէ զի եւ
14 թարգմանիցէ։ Եթէ կամ յաղօթս լեզ-
ուաւ, հոգին իմ կայ յաղօթս, այլ միտք
15 իմ անպտուղ են։ Իսկ արդ՝ զի՞նչ իցէ.
կացից յաղօթս հոգւով, կացից յաղօթս
եւ մտօք. սաղմոս ասացից հոգւով,
16 սաղմոս ասացից եւ մտօք։ Ապա թէ
ոչ՝ եթէ օրհնեսցես հոգւով, որ կայցէ
ի տեղւոջ տգիտին, զիա՞րդ ասիցէ ի
քում գոհութեանդ զԱմէնն. քանզի
17 զոր ասեսն՝ նա ոչ գիտէ։ Զի դու բար-
ւոք գոհանաս, այլ ընկերն ոչ շինի։
18 ԶԸ. Գոհանամ զԱստուծոյ [3]վասն ա-
մենեցուն ձեր" առաւել լեզուաւ խօ-
19 սիմ։ Այլ ի մէջ եկեղեցւոյն կամիմ
բանս հինգ մտօք խօսել զի եւ զայլս
խրատեցից, քան զբազում բանս՝ լեզ-
20 ուաւ։ Եղբարք, մի՛ լինիք տղայք
մտօք, այլ ի չարեաց տղայացարուք,
21 եւ մտօք կատարեալք լինիջիք։ Քանզի
եւ յօրէնսն գրեալ է եթէ Յօտար լեզուս
եւ ի շրթունս օտարոտիս խօսեցայց ընդ
ժողովրդեանդ ընդ այդմիկ, սակայն

[1]Յ-յնն, ամենայնի

[2]Յ-յնն, խնդրեցէք
[3]Յ-յնն, զի քան զամենեսին զձեզ

22 եւ ոչ այնպէս լուիցեն [1]ինձ։ Ապա
ուրեմն լեզուք նշանակք վասն են, ոչ
հաւատացելոց, այլ՝ անհաւատից․ իսկ
մարգարէութիւն՝ ոչ անհաւատից, այլ՝
23 հաւատացելոց։ Արդ եթէ գայցէ եկե-
ղեցին ամենայն ի մի վայր, եւ ամենե-
քին ի լեզուս խօսիցին, եւ մտանիցեն
անգէտք տգէտք կամ անհաւատք, ո՞չ ա-
24 սիցեն եթէ զի մոլիքդ։ Իսկ եթէ ամե-
նեքին մարգարէանայցեն, եւ մտանիցէ
ոք անգէտ անհաւատ կամ տգէտ, յան-
դիմանի յամենեցունց, եւ քննի յամե-
25 նեցունց, Եւ գաղտնիք սրտի նորա
յայտնի լինին․ եւ ապա անկեալ ի
վերայ երեսաց՝ երկիր պագանիցէ Աս-
տուծոյ, եւ խոստովան լինիցի թէ ար-
դարեւ Աստուած է ի ձեզ։
26 ՉԳ․ Եւ արդ զի՞նչ իցէ, եղբարք,
յորժամ ի մի վայր ժողովիցիք, իւրա-
քանչիւր ոք ի ձէնջ եթէ սաղմոս ու-
նիցի, եթէ վարդապետութիւն ունիցի,
եթէ յայտնութիւն ունիցի, եթէ լե-
զուս ունիցի, եթէ թարգմանութիւն
ունիցի, ամենայն ի շինած լինիցի։
27 Եթէ ի լեզուս ոք խօսիցի՝ երկուք, եւ
եթէ եւս աւելի՝ երեք, եւ ապա մի
ըստ միոջէ, եւ մինն թարգմանեսցէ։
28 Ապա եթէ չիցէ ոք որ թարգմանիցէ,
լուռ լիցի յեկեղեցւոջն, ընդ միտս իւր
29 եւ ընդ Աստուծոյ խօսեսցի։ Բայց
մարգարէք երկու կամ երեք խօսես-
30 ցին, եւ այլքն քննեսցեն։ Ապա եթէ
այլ ումեք որ նստիցին՝ յայտնեսցի,
31 առաջինն լռեսցէ։ Քանզի կարող էք
ամենեքեան մի ըստ միոջէ մարգարէ-
անալ, զի ամենեքեան ուսանիցին եւ
32 ամենեքեան մխիթարեսցին։ Քանզի
եւ ոգիք իսկ մարգարէից՝ մարգարէից
33 հնազանդին։ Զի ոչ եթէ խռովութեան
է Աստուած, այլ՝ խաղաղութեան, որ-
պէս յամենայն եկեղեցիս սրբոց։
34 [2]կանայք [3]յամենայն եկեղեցիս՝ լուռ
լիցին, զի ոչ հրամայի նոցա խօսել,
այլ՝ հնազանդ լինել, որպէս եւ օրէնքն
35 իսկ ասեն։ Ապա եթէ ուսանել ինչ
կամիցին, ի տան զարս իւրեանց հար-
ցանիցեն․ քանզի անպարկեշտ է կնոջ
36 մարդոյ յեկեղեցւոջ խօսել։ Եթէ ի
ձէ՞նջ բանն Աստուծոյ ել, եւ կամ թէ
37 առ ձե՞զ միայն եհաս։ Իսկ եթէ ոք հա-
մարիցի մարգարէ լինել կամ հոգեւոր,
գիտասցէ զոր գրեցից առ ձեզ թէ
38 Տեառն պատուիրանք են։ Ապա թէ ոք
39 ոչ գիտանայցէ, ոչ գիտասցի։ Այսուհե-
տեւ, եղբարք, նախանձեցարուք մար-
գարէանալ, եւ զխօսելն լեզուօք մի՛
40 արգելուք։ Եւ ամենայն ինչ [4]ձեր պար-
կեշտութեամբ եւ ըստ կարգի լինիցի։

ՎՋ

## ԳԼ․ ԺԵ

1 Յուցանեմ ձեզ, եղբարք, զաւետա-
րանն [5]իմ, զոր աւետարանեցի ձեզ,
զոր եւ ընկալարուք, յոր եւ հաստատ-
2 եալ էք․ Որով ապրեցէքն, որով բա-
նիւ աւետարանեցի ձեզ թէ ունիցիք․
բայց եթէ ի զուր ինչ հաւատացէք։
3 Զի ես ձեզ զայն նախ աւանդեցի՝ զոր
եւ ես ընկալայ, եթէ Քրիստոս մե-
ռաւ վասն մեղաց մերոց ըստ գրոց,
4 Եւ զի թաղեցաւ, թէ՝ եւ յարեաւ յա-
5 ւուր երրորդի ըստ գրոց․ Եւ թէ՝ ե-
րեւեցաւ Կեփայի, եւ ապա երկոտա-
6 սանիցն․ Ապա երեւեցաւ աւելի եւս
քան զհինգ հարեւր եղբարց միանգա-
մայն․ յորոց բազումք կան մինչեւ
7 ցայժմ, եւ ոմանք ննջեցին․ Եւ ապա
երեւեցաւ Յակոբայ, ապա առաքե-
8 լոցն ամենեցուն ։ Հուսկ յետոյ քան
զամենեսին իբրեւ անարգի միոջ՝ երե-
9 ւեցաւ եւ ինձ։ Զի ես իսկ եմ տրուպն
առաքելոց, որ չեմ իսկ արժանի թէ
կոչեցայց առաքեալ, զի հալածեցի զե-
10 կեղեցին Աստուծոյ։ Այլ շնորհօքն Աս-
տուծոյ եմ զինչ եւ իցեմ․ եւ շնորհք
նորա որ յիս՝ ընդունայն ինչ ոչ եղեն․
այլ առաւել քան զնոսա ամենեսին
վաստակեցի, եւ ոչ եթէ ես՝ այլ
11 շնորհքն Աստուծոյ որ ընդ իս։ Արդ
եթէ՛ ես եւ եթէ՛ նոքա այսպէս քարո-
զեցաք, եւ դուք այսպէս հաւատացէք։
12 Ապա եթէ Քրիստոս քարոզի թէ ի
մեռելոց յարուցեալ է, զիա՞րդ ասեն
ոմանք ի ձէնջ եթէ Յարութիւն մե-
13 ռելոց չիք։ Եթէ յարութիւն մեռելոց
չիք, ապա եւ Քրիստոս չէ յարուցեալ։
14 Եւ եթէ Քրիստոս չիցէ յարուցեալ,
ընդունայն է քարոզութիւնն մեր, ըն-
15 դունայն են եւ հաւատքն ձեր․ Եւ գտա-
նիցիմք սուտ վկայք Աստուծոյ․ զի

[1] Յոյնն, ինձ, ասէ Տէր
[2] Ոմանք, կանայք ձեր
[3] Յոյնն, յեկեղեցիս

[4] ի Յունին պակաս
[5] ի Բազումս պակաս

վկայեցաք զԱստուծոյ թէ Յարոյց
զՔրիստոս. զոր ոչն արդեւք յարոյց,
16 եթէ մեռեալք ոչ յառնիցեն։ Իսկ եթէ
մեռեալք ոչ յառնեն, ապա եւ Քրիստոս
17 չէ յարուցեալ։ Եւ եթէ Քրիստոս չիցէ
յարուցեալ, ընդունայն են հաւատքն
ձեր. եւ տակաւին [1]ի նմին մեղս" կայ-
18 ցէք։ [2]Իսկ արդ որ ննջեցինն ի Քրիստոս,
19 կորեա՞ն արդեւք"։ Եթէ այսու կենօքս
միայն յուսացեալ եմք ի Քրիստոս, ո-
ղորմելի եմք քան զամենայն մարդիկ։
20 ԶԴ. Այլ արդ Քրիստոս յարուցեալ է
ի մեռելոց, առաջին պտուղ ննջեցելոց.
21 Քանզի մարդով եղեւ մահ, եւ մարդով
22 յարութիւն մեռելոց։ Որպէս Ադա-
մաւն ամենեքին մեռանին, նոյնպէս
եւ Քրիստոսիւ ամենեքին կենդանաս-
23 ցին։ Իւրաքանչիւր յիւրում կարգի.
նախ Քրիստոս, եւ ապա Քրիստոսեանք
24 ի գալստեան նորա։ Եւ ապա կատա-
րած, յորժամ տացէ ի ձեռս զթագա-
ւորութիւնն Աստուծոյ եւ Հօր, յոր-
ժամ խափանեսցէ զամենայն իշխանու-
թիւնս եւ զամենայն պետութիւն եւ
25 զզօրութիւն։ Զի պարտ է նմա թա-
գաւորել մինչեւ դիցէ զամենայն թըշ-
26 նամիս ի ներքոյ ոտից իւրոց։ Յետին
թշնամին խափանի՝ մահ. եւ զամե-
նայն ինչ հնազանդ արար ի ներքոյ ո-
27 տից նորա։ Այլ յորժամ ասիցէ թէ
Հնազանդեալ է նմա ամենայն, յայտ է
թէ բաց յայնմանէ որ հնազանդեցոյց
28 նմա զամենայն։ Այլ յորժամ հնազան-
դեսցի նմա ամենայն՝ յայնժամ եւ ինքն
Որդի հնազանդեսցի այնմ, որ հնա-
զանդեցոյց նմա զամենայն. զի եղիցի
29 Աստուած ամենայն յամենայնի։ Ապա
թէ ոչ՝ զի՞նչ գործիցեն որ մկրտի-
ցինն վասն մեռելոց, եթէ արդարեւ
մեռեալք ոչ յառնիցեն. ընդէ՞ր իսկ
30 բնաւ մկրտին վասն նոցա. Ընդէ՞ր եւ
31 մեք ճգնիմք յամենայն ժամ. [3]Եւ հա-
նապազ մեռանիմք", ի պարծանս ձեր
եղբարք, [4]զոր ունիմ ի Քրիս-
32 տոս Յիսուս ի Տէր մեր։ Եթէ [5]վասն
մարդոյ ի գազանամարտի լեալ էի յԵ-
փեսոս, զի՞նչ օգուտ էր [6]ինձ, եթէ
մեռեալք ոչ յառնեն. կերիցուք" արբ-
33 ցուք, քանզի վաղիւ՝ մեռանիմք։ Մի՛
խաբիք. ապականեն զբարս քաղցունս
բանք չարք։
34 ԶԵ. Սթափեցարուք արդարութեամբ
եւ մի՛ մեղանչէք, զի զգիտութիւն
Աստուծոյ ոչ ունին ոմանք. առ ա-
մօթոյ ձերոյ ասեմ։
35 Այլ ասիցէ ոք, Զիա՞րդ յառնեն մեռ-
եալք, կամ որո՞վ մարմնով գայցեն։
36 Անմիտ, դու զոր սերմանեսն՝ ոչ կեն-
37 դանանայ, եթէ ոչ մեռանիցի։ Եւ զոր
սերմանեսն, ոչ զնոյն մարմին որ ծնա-
նելոցն իցէ սերմանես, այլ հատ մերկ,
եթէ՛ ցորենոյ իցէ եւ եթէ՛ այլոց սեր-
38 մանեաց։ Եւ Աստուած տայ նմա մար-
մին որպէս եւ կամի, եւ իւրաքանչիւր
39 սերմանեացն՝ զիւր մարմին։ Ոչ ամե-
նայն մարմին նոյն մարմին է, այլ՝ այլ
մարմին է մարդկան եւ այլ մարմին
անասնոց, այլ մարմին թռչնոց եւ այլ
40 մարմին ձկանց։ Եւ՛ մարմինք երկնա-
ւորք, եւ՛ մարմինք երկրաւորք. այլ՝
այլ փառք երկնաւորաց են, եւ այլ
41 փառք՝ երկրաւորաց։ Այլ փառք արե-
գական եւ այլ փառք՝ լուսնի, եւ այլ
փառք աստեղաց. եւ աստղ քան զաստղ
42 առաւել է փառօք։ Նոյնպէս եւ յա-
րութիւն մեռելոց. սերմանի ապակա-
նութեամբ եւ յառնէ առանց ապակա-
43 նութեան. Սերմանի անարգութեամբ
եւ յառնէ փառօք. սերմանի տկարու-
44 թեամբ եւ յառնէ զօրութեամբ. Սեր-
մանի մարմին շնչաւոր եւ յառնէ մար-
մին հոգեւոր. եթէ գոյ մարմին շնչա-
45 ւոր, գոյ եւ հոգեւոր. Այսպէս եւ
գրեալ է, Եղեւ մարդն առաջին Ադամ
ի շունչ կենդանի, երկրորդ Ադամ՝ ի
46 հոգի կենդանարար։ Բայց ոչ նախ հո-
գեւորն. այլ շնչաւորն, եւ ապա հո-
47 գեւորն։ Առաջին մարդն՝ յերկրէ հողե-
ղէն, իսկ երկրորդ մարդն՝ Տէր յերկ-
48 նից։ Որպէս հողեղէնն, նոյնպէս եւ
հողեղէնքս. եւ որպէս երկնաւորն,
49 նոյնպէս եւ երկնաւորքն։ Եւ որպէս
զգեցաք զպատկեր հողեղինին, զգեց-
ցուք եւ զպատկեր երկնաւորին։
50 ԶԶ. Բայց զայս ասեմ, եղբարք, եթէ
մարմին եւ արիւն զարքայութիւնն
Աստուծոյ ժառանգել ոչ կարեն. եւ ոչ
ապականութիւն զանապականութիւն

[1]Յոյնն, ի մեղս ձեր
[2]Յոյնն, Նոյնպէս և որ ննջեցինն ի Քրիստոս, կորեան
[3]Բուլգատ, Ես հանապազ մեռանիմ
[4]Յոմանս պակասէ
[5]Կամ, ըստ
[6]Կամ, ինձ. եթէ մեռեալք ոչ յառնեն, կերիցուք, ևն.

51 ժառանգել։ Արդ խորհուրդ մի ասեմ
ձեզ, [1]Ամենեքեան ննջեսցուք, այլ ոչ
52 եթէ ամենեքեան։ Նորոգեսցուք յան֊
կարծակի՝՝ յական թօթափել ի փող յե֊
տին, քանզի փող հարկանի, եւ մեռ֊
եալք յարիցեն առանց ապականու֊
53 թեան, եւ մեք նորոգեսցուք։ Զի
պարտ է ապականութեանս այսմիկ
զգենուլ զանապականութիւն, եւ մահ֊
կանացուիս այսմիկ՝ զգենուլ զանմա֊
54 հութիւն։ Այլ յորժամ մահկանացուս
այս զգեցցի զանմահութիւն, եւ ա֊
պականութիւնս՝ զանապականութիւն,
յայնժամ եղիցի բանն որ գրեցաւ եթէ
55 Ընկլաւ մահ ի յաղթութիւն։ Ո՞ւր է,
մահ, յաղթութիւն քո․ ո՞ւր է, [2]գժոխք,
56 խայթոց քո։ Խայթոց մահու մեղք են,
57 եւ զօրութիւն մեղաց՝ օրէնք։ Այլ
շնո՛րհք Աստուծոյ, որ ետ մեզ զյաղ֊
թութիւն ի ձեռն Տեառն մերոյ Յի֊
սուսի Քրիստոսի։
58 ԱԴ․ Այսուհետեւ, եղբարք իմ սի֊
րելիք, հաստատուն եղերուք, անշարժ
կացէք, առաւել լերուք ի գործ Տեառն
յամենայն ժամ․ գիտասջիք զի վաս֊
տակքն ձեր ոչ են ընդունայն առաջի
Տեառն։

## ԳԼ․ ԺԶ

1 Այլ վասն հաչուին որ ի սուրբսն է,
որպէս պատուէր ետու եկեղեցեացն
Գաղատացւոց, նոյնպէս եւ դուք առ֊
2 նիջիք։ Ըստ իւրաքանչիւր միաշաբա֊
թուցն իւրաքանչիւր ոք ի ձէնջ [3]առձին
իւրում զանձեսցէ՝ որ ինչ՝՝ եւ յաջո֊
3 ղեսցի։ Զի մի՛ յորժամ գայցեմ, յայն֊
ժամ հաչիւք լինիցին․ այլ յորժամ եկից,
զոր միանգամ [4]ընտրեսջիք՝ թղթովք
զնոսա՝՝ առաքեցից տանել զշնորհսն
4 ձեր յԵրուսաղէմ։ Ապա թէ արժան
իցէ եւ ինձ երթալ, ընդ իս երթիցեն։
5 Այլ եկից առ ձեզ յորժամ ի Մակեդո֊
նիա անցանիցեմ, [5]բայց իբրեւ շրջե֊
6 ցայց ընդ Մակեդոնիա՝՝, թէ դէպ լիցի,
առ ձեզ մնացից եւ կամ ձմերեցից, զի
դուք յուղարկիցէք զիս ուր եւ եր֊
7 թայցն եմ։ Զի ոչ կամիմ զձեզ այժմ
ի հարեւանցի տեսանել․ այլ ունիմ
ժամանակ ինչ անել առ ձեզ, եթէ
8 Տէր հրամայեսցէ։ Բայց այժմ լինիմ
9 յԵփեսոս մինչեւ ցՊենտակոստէ․ Զի
դուռն բացեալ է ինձ մեծ եւ կարեւոր,
եւ հակառակորդք բազում են։
10 Արդ եթէ եկեսցէ Տիմոթէոս, տես֊
ջիք զի արդ աներկեւղ լինիցի առ ձեզ․
զի զգործ Տեառն գործէ, որպէս եւ
11 ես։ Մի՛ ոք զնա անգոսնեսցէ, եւ
յուղարկեսջիք զնա խաղաղութեամբ
զի եկեսցէ առ իս․ քանզի ակն ունիմ
նմա եղբարբք հանդերձ։
12 ԱԶ․ Այլ վասն Ապողոսի եղբօր՝ յոյժ
աղաչեցի զնա զի եկեսցէ առ ձեզ եղ֊
բարբք հանդերձ․ եւ արդեւք ոչ էին
կամք զի այժմ եկեսցէ, այլ եկեսցէ
յորժամ եւ պարապեսցէ։
13 Զգաստացարուք, հաստատուն կացէք ի հա֊
ւատս, ժրացարուք, զօրացարուք։
14 Ամենայն ինչ ձեր սիրով լիցի։
15 Աղաչեմ զձեզ, եղբարք, գիտէք
զտունն [6]Ստեփանեայ եւ Փորտու֊
նատեայ որ են՝՝ պտուղ Աքայեցւոց․
եւ ի պաշտօն սրբոցն կարգեցին զան֊
16 ձինս․ Զի եւ դուք հնազանդ լինիցիք
այնպիսեացն, եւ ամենայնի որ գոր֊
17 ծակից իցէ եւ վաստակակից։ Ուրախ
եմ ի գալ Ստեփանեայ եւ Փորտու֊
նատեայ եւ Աքայիկոսի, զի զձեր պա֊
18 կասութիւն նոքա լցին․ Քանզի հան֊
գուցին զհոգի իմ եւ զձեր․ արդ ծա֊
նիջիք զայնպիսիսն։
19 Ողջոյն տան ձեզ եկեղեցիքն Ասիա֊
ցւոց։ Ողջոյն շատ տան ձեզ ի Տէր Ա֊
կիւղաս եւ [7]Պրիսկա հանդերձ ատենին
20 եկեղեցեաւն իւրեանց։ Ողջոյն տան
ձեզ եղբարք ամենեքեան։ Ողջոյն տուք
միմեանց ի համբոյր սրբութեան։
21 Ողջոյնդ այդ իմոյ ձեռին Պաւղոսի
22 է։ Եթէ ոք ոչ սիրէ [8]զՏէր Յիսուս՝՝,
23 եղիցի նզովեալ․ Մարան աթա։ Շնորհք
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ
24 ձեզ։ Եւ սէրն իմ ընդ ամենեսին ձեզ
ի Քրիստոս Յիսուս։ Ամէն։

Առ Կորնթացիս առաջին թուղթն գրեցաւ յԵփեսոսէ ի ձեռն Ստեփանեայ և Փորտունատեայ և Աքայիկոսի։

[1]Բազումք, Ոչ ամենեքեան ննջեսցուք, այլ ամենեքեան նորոգեսցուք։ (52) Յանկարծակի
[2]Բազումք, մահ
[3]Յոմն, դիցէ առ իւր՝ գանձել որ ինչ
[4]Կոմ, ընտրիցէք թղթովք՝ զնոսա

[5]Յոմն, քանզի անցից ընդ Մակեդոնիա
[6]Բազումք, Ստեփանեայ որ է առաջին
[7]Ոմանք, Պրիսկիղա
[8]Ոմանք, զՏէր․ այլք՝ զՏէր Յիսուս Քրիստոս

# ԱՌ ԿՈՐՆԹԱՑԻՍ

## ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 ԲԿ. ՊԱՒՂՈՍ, առաքեալ Յիսուսի
Քրիստոսի կամօքն Աստուծոյ, եւ Տի-
մոթէոս եղբայր. եկեղեցւոյդ Աստու-
ծոյ որ է ի Կորնթոս, սրբովքդ ամե-
նեքումբք որ են յամենայն կողմանս
2 Աքայեցւոց. Շնորհք ընդ ձեզ եւ խա-
ղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ
եւ ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ։
3 Օրհնեալ է Աստուած եւ Հայր Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի, Հայր գթու-
թեանց եւ Աստուած ամենայն մխի-
4 թարութեան. Որ մխիթարէն զմեզ
յամենայն նեղութիւնս մեր, առ ի կա-
րող լինելոյ մեզ մխիթարել զայնոսիկ
որ յամենայն նեղութիւնսն իցեն, մխի-
թարութեամբն որով մեք մխիթարիմք
5 յԱստուծոյ։ Զի որպէս առաւելուն չար-
չարանքն Քրիստոսի ի մեզ, նոյնպէս
եւ ի ձեռն Քրիստոսի առաւել լցի եւ
6 մխիթարութիւնն մեր։ Զի եթէ նե-
ղիմք, վասն ձերոյ մխիթարութեան
եւ փրկութեան. եւ եթէ մխիթարիմք,
վասն ձերոյ [1]մխիթարութեան որ յա-
ջողեալն է համբերութեամբ նոցին չար-
չարանաց զոր եւ մեքն չարչարիմք.
7 Եւ յոյսն մեր հաստատուն է վասն ձեր.
քանզի գիտեմք եթէ որպէս կցորդ էք
չարչարանացն, նոյնպէս եւ մխիթա-
8 րութեանն։ Քանզի ոչ կամիմ տգէտ
լինել ձեզ, եղբարք, վասն նեղութեան
մերոյ եղելոյ յԱսիա. զի առաւել քան
զկար մեր ծանրացաք, մինչեւ անյոյս
9 լինելոյ մեզ եւ ի կենաց։ Այլ անձամբ
յանձինս զվճիռ մահու ընկալաք, զի
մի՛ յանձինս ապաստանիցեմք, այլ յԱս-
10 տուած որ յարուցանէ զմեռեալս. Որ
յայնպիսի մահուանէ փրկեաց զմեզ եւ
11 փրկեսցէ. [2]Քանզի յուսացեալ եմք, եթէ
տակաւին փրկեսցէ օգնականութեամբ
աղօթից ձերոց վասն մեր. զի ի բազ-
մազէմ շնորհացն որ ի մեզ, բազմօք
յաճախեսցեն գոհութիւնքն վասն մեր։
12 ԲԴ. Քանզի պարծանք մեր այս են,
վկայութիւն մտաց մերոց, զի սրբու-
թեամբ եւ ստուգութեամբ Աստուծոյ,
եւ ոչ մարմնեղէն իմաստութեամբ,
այլ շնորհօքն Աստուծոյ շրջեցաք յաշ-
խարհի, բայց առաւել եւս առ ձեզ։
13 Քանզի ոչ եթէ այլ ազգ ինչ գրեմք
առ ձեզ, այլ զոր ընթեռնուցուքն եւ
գիտակ լինիցիք. քանզի յուսամ եթէ
14 մինչեւ ի վախճան գիտիցէք. Որպէս
եւ խելամուտ եղէք մեզ փոքր ի շատէ,
զի պարծանք ձեր եմք, որպէս եւ դուք
մեր՝ յաւուրն Տեառն [3]մերոյ Յիսուսի
[3]Քրիստոսի։
15 Եւ յայս ապաստան կամէի նախ առ
ձեզ գալ, զի դուք կրկին շնորհս ըն-
16 դունիջիք. Եւ ի ձէնջ երթալ ի Մա-
կեդոնիա. եւ դարձեալ ի Մակեդոնիայ
գալ առ ձեզ, եւ ի ձէնջ յուղարկել ի
17 Հրէաստան։ Իսկ եթէ զայս խորհեցայ,
միթէ թեթեւութեա՞մբ ինչ գնացի. եւ
կամ զոր խորհիմս՝ ըստ մարմնո՞յ ինչ
խորհլիցիմ, այլ զի եղիցի յինէն կող-
18 մանէ այոն՝ այո, եւ ոչն՝ ոչ։ Հաւա-
տարիմ է Աստուած զի բանն մեր որ
19 առ ձեզ [4]եհաս՝ ոչ է այո եւ ոչ։ Քանզի
Որդին Աստուծոյ Յիսուս Քրիստոս,
որ ի ձեզ մեւք քարոզեցաւ, ինեւ եւ
Սիղուանոսիւ եւ Տիմոթէիւ, ոչ եղեւ
այո՛ եւ ոչ, այլ այոն ի նմին եղեւ։
20 Զի որչափ աւետիքն Աստուծոյ՝ են

[1]Ոմանք, մխիթարութեան և փրկութեան

[2]Յոմնս, Յոր
[3]Յոմանս պակասէ
[4]ի Յոմնսն պակասէ

ի նմա Այոն, վասն որոյ եւ նովին Ա-
21 մէնն մեւք ի փառս Աստուծոյ։ Այլ որ
հաստատեացն զմեզ ձեւք հանդերձ ի
Քրիստոս, եւ օծ զմեզ՝ Աստուած է.
22 Որ եւ կնքեացն զմեզ, եւ ետ զառ-
հաւատչեայ Հոգւոյն ի սիրտս մեր։
23 ԲՋ. Այլ ես վկայ զԱստուած կոչեմ
անձին իմոյ, զի վասն խնայելոյ ի ձեզ
ոչ եւս եկի ի Կորնթոս. զի ոչ եթէ
տիրեմք ձեզ հաւատովքս՝ այլ գործա-
կից եմք [1]շնորհացդ ձերոց՟. քանզի հա-
ւատովք հաստատեալ կայք։

## ԳԼ. Բ

1 Բայց զայս [2]եւեթ ընտրեցի՟, զի մի՛
միւսանգամ տրտմութեամբ եկից առ
2 ձեզ. Զի եթէ ես տրտմեցուցանեմ
զձեզ, եւ ո՞վ է որ ուրախ առնիցէ զիս,
3 եթէ ոչ՝ որ տրտմիցին յինէն։ Եւ զայս
զի գրեցի՝ զի մի՛ յորժամ գայցեմ,
տրտմութիւն ինչ կրիցեմ, ուստի ար-
ժանդ իցէ ինձ ուրախ լինել. յուսա-
ցեալ եմ ի ձեզ ամենեսին, զի իմ ու-
4 րախութիւնս ձեր ամենեցուն է։ Զի
ի բազում վշտաց եւ ի նեղութենէ սրտի
գրեցի առ ձեզ բազում արտասուօք.
ոչ զի տրտմիցիք, այլ զի զսէրն իմ
գիտասջիք զոր ունիմ առաւելապէս
5 առ ձեզ։ Ապա թէ ոք տրտմեցոյց, ոչ
եթէ զիս տրտմեցոյց, այլ փոքր ի շատէ,
զի մի՛ ծանրացայց ամենեցուն ձեզ։
6 Շատ է այնպիսւոյն սաստն այն
7 որ ի բազմաց անտի է։ Այսուհետեւ
նմին հակառակ՝ մանաւանդ շնորհել
ձեզ նմա եւ մխիթարել. զի մի՛ յա-
ռաւել տրտմութենէն ընկղմեսցի այն-
8 պիսին։ Վասն որոյ աղաչեմ զձեզ հաս-
9 տատել ի նա զսէրն։ Վասն այնորիկ
իսկ եւ գրեցի, զի զչափ առից զձեր
10 եթէ յամենայնի հպատակ իցէք։ Զի
եթէ ումեք շնորհիցէք, եւ ես. քանզի
եւ ես եթէ շնորհիցեմ, զոր ինչ շնոր-
հիցեմն՝ վասն ձեր ի դէմս Քրիստոսի.
11 Զի մի՛ զրկիցիմք ի Սատանայէ. քանզի
չեմք ինչ անտեղեակ խորհրդոցն նորա։
12 ԳԿ. Այլ իբրեւ հասի ես ի Տրովադա
յաւետարանն Քրիստոսի, եւ դուռն
13 բաց էր ինձ ի Տէր, Ոչ ետու հանգիստ
հոգւոյ իմում. քանզի ոչ գտի ես անդ
զՏիտոս զեղբայր իմ. այլ հրաժարեալ
ի նոցանէ՝ գնացի ի Մակեդոնիա։
14 Այլ Աստուծոյ շնորհքն որ յամե-
նայնի հաչակ հարկանէ զմեզ ի Քրիս-
տոս [3]Յիսուս, եւ զհոտ գիտութեանն
իւրոյ յայտնի առնէ մեւք յամենայն
15 տեղիս. Զի հոտ անոյշ եմք Քրիստոսի
առ Աստուած ի մէջ փրկելոցն եւ ի մէջ
16 կորուսելոցն. Ոմանց հոտ՝ մահուանէ
ի մահ, եւ ոմանց հոտ՝ կենդանութենէ
ի կեանս. եւ առ այս ո՞ բաւական իցէ։
17 Քանզի ոչ եմք իբրեւ զայլսն որ վա-
ճառական լինին բանին Աստուծոյ. այլ
իբրեւ ի հաստատութենէ, այլ իբրեւ
յԱստուծոյ առաջի Աստուծոյ ի Քրիս-
տոս խօսիմք։

## ԳԼ. Գ

1 [4]Սկսանիմք այսուհետեւ վերստին
զանձինս ընծայեցուցանել. [5]թէպէտ
եւ ոչ պիտոյ իցեն մեզ՟, որպէս ոմանց՝
թուղթք ընծայութեան առ ձեզ կամ
2 ի ձէնջ։ Այլ թուղթք մեր դուք էք՝
գրեալ ի սիրտս մեր, ծանուցեալ եւ ըն-
3 թերցեալ յամենայն մարդկանէ. Յայտ-
նեալք՝ զի էք թուղթք Քրիստոսի,
պաշտեցեալ ի մէնջ. եւ գրեալ՝ ոչ
մրով, այլ Հոգւովն Աստուծոյ կեն-
դանւոյ. ոչ ի տախտակս քարեղէնս,
այլ ի տախտակս սրտի մարմնեղէնս։
4 ԳԴ. Յոյս մի այսպիսի ունիմք ի ձեռն
5 Քրիստոսի առ Աստուած. Իբր ոչ եթէ
անձամբ բաւական եմք խորհել ինչ
իբրեւ ի մէնջ. այլ բաւականութիւնն
6 մեր յԱստուծոյ է. Որ եւ բաւականս
արար զմեզ, պաշտօնեայս նորոց կտա-
կարանացս, ոչ գրով, այլ հոգւով. զի
գիրն սպանանէ, այլ հոգին կեցուցանէ։
7 Զի եթէ պաշտօն մահու գրով դրոշմեալ
ի տախտակն քարեղէնս եղեւ փառօք,
զի մի՛ կարասցեն հայել որդիքն Իս-
րայելի յերեսսն Մովսիսի վասն փառաց
երեսաց նորա որ խափանելոցն էր,
8 Ո՞րչափ եւս առաւել պաշտօն հոգւոյն
9 եղիցի փառօք։ Զի եթէ պաշտօն դա-
տապարտութեանն փառօք էր, ո՞րչափ
եւս առաւել պաշտօն արդարութեանն

[1]Կամ, ուրախութեանդ ձերում
[2]Յոյնն, ընտրեցի ինձ

[3]Ի բազումս պակասէ
[4]Յոյնն, Սկսանի՞մք
[5]Յոյնն, կամ թէ իցե՞ն պիտոյ մեզ

10 փառօք ։ Քանզի ոչ եթէ փառաւորի
փառաւորեալն յայսմ մասին՝ վասն ա-
11 ռաւելութեան փառացն ։ Զի եթէ որ
խափանելոցն էր՝ այն փառօք էր , ո՜ր-
չափ եւս առաւել որ գալոցն է՝ փառօք
12 իցէ ։ Եւ արդ՝ զի ունիմք այսպիսի
յոյս , բազում համարձակութեամբ վա-
13 րեսցուք ․ Եւ ոչ որպէս Մովսէս ար-
կանէր քող ի վերայ երեսաց իւրոց՝
վասն չհայելոյ որդւոցն Իսրայելի ի
14 վախճան խափանելոցն ։ Այլ կուրացան
միտք նոցա ․ քանզի մինչեւ ցայսօր
ժամանակի նոյն քող ձգեալ կայ ի վե-
րայ ընթերցուածոց հին կտակարա-
նացն ․ եւ ոչ վերանայ , զի Քրիստոսիւ
15 խափանելոց է ։ Այլ մինչեւ ցայսօր՝
յորժամ ընթեռնուն զՄովսէս , նոյն
առագաստ կայ ի վերայ սրտից նոցա ։
16 Այլ յորժամ դարձցին առ Տէր , ապա
վերասցի առագաստն ։ ՎԶ
17 Զի Տէր Հոգին է ․ ուր Հոգի Տեառն
18 է , անդ ազատութիւն է ։ Բայց մեր
ամենեցուն բացաւ երեսօք զփառսն
Տեառն իբրեւ ընդ հայելի տեսեալ՝ ի
նոյն պատկեր նորոգիմք փառաց ի
փառս , որպէս եւ ի Տեառն Հոգւոյ ։

## ԳԼ․ Դ

1 Վասն այսորիկ՝ ունիմք զպաշտօնս
զայս , որպէս եւ գտաք ողորմութիւն․
2 եւ ոչ ձանձրանամք ․ Այլ հրաժարե-
ցաք ի գաղտնեաց ամօթոյն , զի [1]մի՛
գնասցուք՟ խորամանկութեամբ , եւ
[2]մի՛ նենգեսցուք՟ զբանն Աստուծոյ ․
այլ յայտնութեամբ ճշմարտութեանն
[3]ընծայեցուսցուք զանձինս մեր առ ա-
մենայն միտս մարդկան առաջի Ա-
3 ստուծոյ ։ Ապա թէ իցէ եւս ծածկեալ
աւետարանն մեր , ի մէջ կորուսելոցն
4 է ծածկեալ ․ Որոց աստուած աշխար-
հիս այսորիկ կուրացոյց զմիտս ան-
հաւատիցն , զի մի՛ ծագեսցէ ի նոսա
լուսաւորութիւն աւետարանի փա-
ռացն Քրիստոսի ․ որ է պատկեր [4]անե-
5 րեւութին Աստուծոյ ։ Զի ոչ եթէ զան-
ձինս քարոզեմք , այլ զՅիսուս Քրիս-
տոս զՏէր , եւ զմեզ ծառայս ձեզ վասն
6 Քրիստոսի ։ Զի Աստուած որ ասաց

ի խաւարէ լոյս ծագել , [5]որ եւ՟ ծագ-
եաց իսկ ի սիրտս մեր ի լուսաւորու-
թիւն գիտութեան փառացն Աստուծոյ
7 ի դէմս Յիսուսի Քրիստոսի ։ Այսու-
հետեւ ունիմք զգանձս զայս յամանս
խեցեղէնս , զի առաւելութիւն զօրու-
թեանն իցէ յԱստուծոյ , եւ ոչ ի մէնջ ։
8 Յամենայնի նեղեալք՝ այլ ոչ նուաղ-
եալք ․ կարօտեալք՝ այլ ոչ տարակուսե-
9 եալք ․ Հալածեալք՝ այլ ոչ լքեալք ․
10 չարչարեալք՝ այլ ոչ սատակեալք ․ Յա-
մենայն ժամ զմահն Յիսուսի ի մար-
մինս մեր [6]կրեսցուք , զի եւ կեանքն
Յիսուսի ի մարմինս մեր յայտնեսցին ։
11 Քանզի միշտ մեք որ կենդանիքս եմք՝
ի մահ մատնիմք վասն Յիսուսի , զի
եւ կեանքն Յիսուսի յայտնի լիցին ի
12 մահկանացու մարմինս մեր ։ Այսու-
հետեւ մահ ի մեզ զօրանայ , եւ կեանք՝
13 ի ձեզ ։ Արդ ունիմք զնոյն հոգի հա-
ւատոյ , որպէս եւ գրեալ է , Հաւա-
տացի , վասն որոյ եւ խօսեցայ ․ եւ մեք
հաւատամք , վասն որոյ եւ խօսիմք
14 իսկ ։ Զայս գիտեմք եթէ որ յարոյցն
[7]զՅիսուս՝ եւ զմեզ ընդ Յիսուսի յա-
րուսցէ եւ յանդիման կացուսցէ ձեւք
15 հանդերձ ․ Քանզի ամենայն ինչ վասն
ձեր է , զի շնորհքն յաճախեալք ի բազ-
մաց գոհութենէ անտի՝ առաւելեսցին
ի փառս Աստուծոյ ։
16 Վասն որոյ եւ ոչ ձանձրանամք ․ այլ
թէպէտ եւ արտաքին մարդս մեր ա-
պականի , այլ ներքին մարդն մեր նո-
17 րոգի օր ըստ օրէ ։ Զի առժամայն յա-
ճախութիւն թեթեւ նեղութեանս մե-
րոյ ի յաւիտենական առաւելութիւն
զմեծութիւն փառացն գործէ ի մեզ ։
18 Քանզի ոչ գիտեմք զերեւելիսս , այլ՝
զաներեւոյթսն ․ զի երեւելիքս առ ժա-
մանակ մի են , եւ աներեւոյթքն՝ յա-
ւիտենականք ։

## ԳԼ․ Ե

1 Քանզի գիտեմք զի եթէ երկրաւոր
տաճար չինուածոյս մերոյ քակեսցի ,
շինած յԱստուծոյ ունիմք՝ տաճար ա-
նանց ձեռագործի յաւիտենական , յեր-
2 կինս ։ Եւ ընդ այս տաղտկամք , քանզի

[1]Յոյնն, ոչ գնամք
[2]Յոյնն, ոչ նենգեմք
[3]Յոյնն, ընծայեցուցանեմք
[4]Ի բազումս պակասէ
[5]Յոմանս պակասէ
[6]Յոյնն, կրեմք
[7]Ոմանք, զՏէր Յիսուս

զբնակութիւնն երկնից փափաքեմք
3 զգենուլ. Միայն թէ յորժամ զգենու-
4 ցումքն՝ ոչ մերկ գտանիցիմք: Քանզի
որ եմք ընդ յարկաւս ընդ այսուիկ՝
առաչանմք ծանրացեալք. զի ոչ կա-
միմք մերկանալ, այլ զայն ի վերայ
այսր զգենուլ, զի ընկղմեսցի մահկա-
5 նացուս ի կենաց անտի: Այլ որ յա-
ջողէն մեզ ի սոյն՝ Աստուած է, որ ետ
մեզ զառհաւատչեայ Հոգւոյն:
6 Գ.Զ. Արդ համարձակիմք յամենայն
ժամ, և գիտեմք եթէ որչափ յամեմք
ի մարմնի աստ, օտարանամք ի Տեառնէ:
7 (Զի հաւատովք գնամք և ոչ կար-
8 ծեօք.) Այլ համարձակիմք, և առա-
ւել ևս հաճեայ եմք ելանել ի մարմ-
նոյ աստի և մտանել առ [1]Աստուած:
9 Վասն որոյ և առատանամք, զի եթէ՝
յամիցեմք և եթէ՝ ելանիցեմք, հաճոյ
10 ևեթ լիցեմք նմա: Քանզի ամենեցուն
մեզ յանդիման լինել կայ առաջի ա-
տենին Քրիստոսի, զի ընկալցի [2]իւրա-
քանչիւր իւրով մարմնով զոր ինչ գոր-
ծեաց յառաջ՝ եթէ բարի և եթէ չար:
11 Իսկ արդ զահ Տեառն գիտելով չափ՝
զմարդկան ինչ զմիտս հաճեմք. սա-
կայն առաջի Աստուծոյ [3]յայտնեալ եմք.
բայց ես յուսամ և ի ձեր միտս յայտ-
12 նի լինել: Իբր ոչ եթէ միւսանգամ
զանձինս ինչ ընծայեցուցանեմք ձեզ,
այլ պատճառս տամք ձեզ պարծանաց
վասն մեր. զի ունիցիք առ այնոսիկ
որ առ աչօք պարծիցին և ոչ սրտիւք:
13 Զի եթէ ատամցաք ինչ՝ այն Աստու-
ծոյ է. և եթէ զգաստանամք՝ այն
14 ձեր է. Զի սէրն Քրիստոսի ստիպէ
զմեզ. [4]քննել զայս, զի եթէ մին փո-
խանակ ամենեցուն մեռաւ, ապա ա-
15 րեմն ամենեքեան մեռեալ էին. Եւ ի
վերայ ամենեցուն մեռաւ, զի որ կեն-
դանիքն իցեն՝ մի՛ անձանց իցեն կեն-
դանիք, այլ այնմ որ ի վերայ նոցայն
16 մեռաւ և յարեաւ: Այսուհետև մեք
ոչ զոք գիտեմք մարմնով. զի թէպէտ
և գիտէաք մարմնով զՔրիստոս, այլ
17 արդ ոչ ևս նոյնպէս գիտեմք: Բայց
եթէ [5]ինչ ի Քրիստոս, նոր արարած
լիցի. զի հինն անց, և արդ նոր եղև
18 [6]ամենայն: Այլ ամենայն ինչ յԱստու-
ծոյ որ հաշտեցոյցն զմեզ ընդ իւր ի
ձեռն [7]Քրիստոսի, և ետ մեզ զպաշ-
տօնն հաշտութեան: Վ.Զ.
19 Եւ քանզի Աստուած էր [8]Քրիստոսիւ
զաշխարհս հաշտեցուցանել ընդ իւր,
և չհամարել՝ նոցա զմեղս իւրեանց,
20 և եդ ի մեզ զբանն հաշտութեան: Արդ
վասն Քրիստոսի պատգամաւորիմք,
որպէս և Աստուծոյ բարեխօսութեամբ
մեւք. աղաչեմք վասն Քրիստոսի հաշ-
21 տեցարուք ընդ Աստուծոյ: Զի զայն
որ ոչն գիտէր զմեղս՝ վասն մեր մեղս
արար, զի մեք եղիցուք նովաւ ար-
դարութիւն Աստուծոյ:

## Գլ. Զ

1 Գործակից եմք ձեր և աղաչեմք, մի՛
ընդունայն զշնորհսն Աստուծոյ ընդու-
2 նել ձեզ: Զի ի ժամանակի ընդունե-
լութեան, ասէ, լուայ քեզ, և յաւուր
փրկութեան օգնեցի քեզ. ահաւասիկ
ժամանակ ընդունելի, ահա օր փրկու-
3 թեան: [9]Մի՛ և մի՛ իւիք տայցէք
պատճառս՝ զի մի՛ արատեսցի պաշ-
4 տօնն. Այլ յամենայնի [10]ընծայեցուցէք
զանձինս ձեր՝ իբրև զպաշտօնեայս
Աստուծոյ համբերութեամբ բազմաւ
ի նեղութիւնս, ի վիշտս, ի չարչա-
5 րանս, ի գանս, ի բանտս, ի խռովու-
թիւնս, յաշխատութիւնս, ի հսկմունս,
6 ի պահս, ի սրբութեան, ի գիտու-
թեան, յերկայնմտութեան, ի քաղց-
րութեան, ի Հոգի Սուրբ, ի սէր ա-
7 նանց կեղծաւորութեան, ի բանս ճըշ-
մարտութեան, ի զօրութեան Աստու-
ծոյ. [11]վասն զինուն արդարութեան
8 որ ընդ աջմէն և ընդ ահեկէն է. Փա-
ռօք և անարգութեամբ, զովութեամբ
և պարսաւանօք. իբրև մոլարք և
9 ճշմարիտք. Իբրև անծանօթք և ծա-
նուցեալք. իբրև մահկանացուք և
ահաւասիկ կենդանի եմք. իբրև խրա-
10 տեալք և ոչ մահապարտեալք. Իբրև

[1]Բազմ+, Տէր
[2]Յօրին., իւրաքանչիւր ըստ որոց գործեացն իւրով մարմնով
[3]Յօրին., յայտնի
[4]Յօրին., դատիմք
[5]Յօրին., ոք
[6]Յոմանս պակասի
[7]Ոմանք+, Յիսուսի Քրիստոսի
[8]Յօրին., որ Քրիստոսիւ զաշխարհս հաշտեցոյց ընդ իւր, և չհամարեցաւ
[9]Յօրին., Ոչ ինչ իւիք տամք պատճառս
[10]Յօրին., ընծայեցուցանեմք զանձինս մեր
[11]Յօրին., ի ձեռն

*տրտմեալք եւ հանապազ ուրախ եմք.*
*իբրեւ տնանկք եւ զբազումս մեծա-*
*ցուցանեմք. իբրեւ ոչինչ ունիցիմք,*
11 *եւ զամենայն ինչ ունիմք։ Բերանք*
*մեր բացեալ են առ ձեզ, Կորնթացիք,*
12 *եւ սիրտք մեր ընդարձակեալք։ Ոչինչ*
*նեղիք ի մէնջ բայց եթէ ի գութս ձեր*
13 *նեղիցիք. Արդ զնոյն հատուցումն,*
*(իբրեւ ընդ որդեակս [1]ունիմ,) ընդար-*
*ձակեցարուք եւ դուք։*
14 *Եւ մի՛ լինիք լծակիցք անհաւատից.*
*քանզի զի՞նչ հաղորդութիւն է արդա-*
*րութեան ընդ անօրէնութեան. եւ*
*կամ զի՞նչ հաւասարութիւն է լուսոյ*
15 *ընդ խաւարի. Եւ կամ զի՞նչ միաբա-*
*նութիւն է Քրիստոսի ընդ Բելիարայ.*
16 *կամ զի՞նչ բաժին կայ հաւատացելոյն*
*ընդ անհաւատին. կամ զի՞նչ նմանու-*
*թիւն է տաճարի Աստուծոյ՝ մեհենաց.*
*ապաքէն դուք տաճար Աստուծոյ կեն-*
*դանւոյ էք, որպէս ասաց Աստուած*
*թէ Բնակեցայց ի նոսա եւ գնացից ի*
*նոսա, եւ եղէց նոցա Աստուած եւ*
17 *նոքա եղիցին իմ ժողովուրդք։ Վասն*
*որոյ ելէք ի միջոյ նոցա եւ մեկնեցա-*
*րուք, ասէ Տէր, եւ ի պիղծս մի՛ մեր-*
18 *ձենայք. Եւ ես ընկալայց զձեզ, եւ ես*
*եղէց ձեզ ի Հայր, եւ դուք եղիջիք*
*ինձ յուստերս եւ ի դստերս, ասէ Տէր*
*Ամենակալ։*

## ԳԼ. Է

1 **Ի***սկ որովհետեւ զայս աւետիս ու-*
*նիմք, սիրելիք, սրբեսցուք զանձինս*
*մեր յամենայն պղծութենէ մարմնոյ եւ*
*հոգւոյ, կատարեսցուք զսրբութիւն*
2 *ահիւն Աստուծոյ։ Տարայք մեզ, զի*
*ոչ ումեք մեղաք, եւ ոչ զոք եղծաք,*
3 *եւ ոչ զոք զրկեցաք։ Ոչ եթէ ի դա-*
*տապարտութիւն ինչ ասեմ, քանզի*
*յառաջ իսկ ասացի եթէ ի սրտի մե-*
*րում կայք՝ ի կեալ եւ ի մեռանել*
*ընդ ձեզ։*
4 *ԴԿ. Բազում համարձակութիւն է*
*ինձ՝ առ ձեզ. բազում պարծանք են*
*ինձ վասն ձեր. լի եմ մխիթարու-*
*թեամբ, առաւելեալ եմ ուրախու-*
*թեամբ յամենայն նեղութիւնս մեր։*
5 *Քանզի յորժամ հասաք մեք ի Մակե-*
*դոնիա, եւ ոչ միով իւիք հանգիստ*
*գտաւ մարմնոյ մերում, այլ յամենայնի*
*նեղեալք. քանզի արտաքոյ մարտք եւ*
6 *ի ներքոյ արհաւիրք։ Այլ որ մխիթա-*
*րէն զխոնարհս՝ մխիթարեաց զմեզ Աս-*
7 *տուած ի գալստեանն Տիտոսի։ Ոչ*
*միայն ի գալստեան նորա, այլ եւ ի*
*մխիթարութեանն զոր մխիթարեցաւ*
*նա ի ձեզ, ի պատմել մեզ զանձուկն*
*ձեր, զողբումն ձեր, զնախանձն ձեր*
*վասն իմ, մինչ առաւել ուրախ լինել*
8 *ինձ։ Զի թէ եւ տրտմեցուցի զձեզ*
*թղթովն, ոչ զղջանամ, թէպէտ եւ*
*զղջացեալ էի. քանզի տեսանեմ զի*
*թուղթն այն թէ եւ առ ժամանակ մի*
9 *տրտմեցոյց զձեզ. Արդ ուրախ եմ, ոչ*
*զի [2]տրտմիցիք, այլ զի յապաշխարու-*
*թիւն տրտմեցարուք. քանզի տրտմե-*
*ցայք դուք ըստ Աստուծոյ, զի մի՛*
10 *իւիք զրկիցիք ի մէնջ։ Զի որ ըստ*
*Աստուծոյն տրտմութիւն է՝ ապաշխա-*
*րութիւն ի փրկութիւն առանց զղջա-*
*նալոյ գործէ, իսկ աշխարհի տրտմու-*
11 *թիւն մահ գործէ։ Արդ նոյն իսկ որ ըստ*
*Աստուծոյն տրտմեցարուք, ո՛րչափ ինչ*
*փոյթ գործեաց ի ձեզ, կամ աղերս, կամ*
*սաստ, կամ երկեւղ, կամ անձուկ,*
*կամ նախանձ, կամ վրէժխնդրու-*
*թիւն. քանզի յամենայնի ընծայե-*
*ցուցէք զանձինս ձեր՝ սուրբս լինել*
12 *յիրիդ յայդմիկ։ Ապա ուրեմն թէ եւ*
*գրեցի ես առ ձեզ, ոչ վասն այնորիկ*
*որ զրկեացն, եւ ոչ վասն այնորիկ որ*
*զրկեցաւն, այլ վասն յայտնի լինելոյ*
*փութոյն [3]ձերոյ որ վասն [4]մեր առ*
13 *ձեզ առաջի Աստուծոյ։ Վասն այնորիկ*
*մխիթարեալ եմք ի վերայ մխիթարու-*
*թեանն [5]մերոյ. առաւել եւս խնդացաք*
*ի վերայ խնդութեանն Տիտոսի. քանզի*
*հանգուցեալ էր հոգի նորա ի ձէնջ ա-*
14 *մենեցունց։ Զի զինչ եւ պարծեցայ*
*առ նմա վասն ձեր՝ ոչ ամաչեցի, այլ*
*որպէս զամենայն ճշմարտութեամբ խօ-*
*սեցաք ընդ ձեզ, նոյնպէս եւ պար-*
*ծանքն մեր առ Տիտոս ճշմարիտ եղեն։*
15 *Նա եւ գութք նորա առաւել եւս են*
*ի ձեզ, քանզի [6]յիշեցուցանէր մեզ՞*
*զամենեցուն զձեր հնազանդութիւն,*
*թէ ո՛րպէս ահիւ եւ դողութեամբ*

---

[1] Յոյնն, խօսիմ  [2] Յոյնն, տրտմեցարուք

[3] Ոմանք, մերոյ  [4] Ոմանք, ձեր  [5] Ոմանք, ձերոյ  [6] Յոյնն, յիշէր

16 ընկալարուք զնա։ Եւ արդ ուրախ եմ,
զի յամենայնի համարձակ եմ առ ձեզ։

## Գլ. Ը

1 Դր. Ցուցանեմ ձեզ, եղբարք, զշը-
նորհսն Աստուծոյ որ տուեալ են եկե-
2 ղեցեացն Մակեդոնացւոց. Զի մեծաւ
համբերութեան նեղութեան՝ առատութիւն
խնդութեանն նոցա, եւ ծանր աղքա-
տութիւնն նոցա առաւել եղեւ ի մե-
3 ծութիւն առատութեան նոցա։ Զի
ըստ կարի նոցա, վկայեմ, եւ աւելի
4 քան զկար ինքնակամ, Բազում աղա-
չանօք [1]աղաչէին զշնորհսն եւ զհաղոր-
դութիւն պաշտամանն որ ի սուրբսն՝
5 [2]տալ ցմեզ"։ Ոչ որչափ ակն ունէաք,
այլ եւ զանձինս եւս ետուն, նախ
Տեառն եւ ապա մեզ՝ կամօքն Աս-
6 տուծոյ, [3]Աղաչել զՏիտոս զի որպէս
սկսաւն յառաջագոյն, նոյնպէս եւ կա-
տարեսցէ ի ձեզ եւ զայդ եւս շնորհս։
7 Այլ որպէս յամենայնի առաւել էք հա-
ւատովք եւ բանիւ եւ գիտութեամբ
եւ ամենայն փութով, եւ որ [4]ի մէնջ
ի ձեզ" սէրն է, զի եւ յայդմ եւս շնորհի
8 առաւել լինիջիք։ Ոչ որպէս հրաման
տալով ասեմ, այլ վասն այլոց փութոյ,
եւ վասն ձերոյ սիրոյ զմտերմութիւնդ
9 փորձեմ։ Քանզի գիտէք զշնորհսն
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զի
վասն ձեր աղքատացաւ որ մեծատունն
էր, զի դուք նորա աղքատութեամբն
10 մեծասջիք։ Եւ խրատ մի յայսմիկ
տամ. զի այն իսկ օգուտ է ձեզ, որք
ոչ միայն զառնելն՝ այլ եւ զկամելն
յառաջագոյն սկսայք ի հերուն հետէ։
11 Բայց արդ եւ զառնելն իսկ կատարե-
ցէք. զի որպէս յօժարութիւնն ի կա-
մաց է, նոյնպէս եւ առնելն ըստ գոյին։
12 Զի եթէ յօժարութիւնն առաջի կայ,
ըստ գոյին ընդունելի է՝ եւ ոչ եթէ
13 ըստ չգոյին։ Զի ոչ եթէ այլոց հան-
գիստ [5]կամիցիմ, եւ ձեզ նեղութիւն.
14 Այլ հաւասարութեամբ, յայժմու ժա-
մանակիս ձեր առաւելութիւնդ ի նոցա
պակասութեանն, զի եւ նոցա առա-
ւելութիւնն եղիցի ի ձերում պակա-
սութեանդ. զի եղիցի հաւասարու-
15 թիւն, որպէս եւ գրեալ է, Թէ Որ բա-
զումն [5]առ՝ ոչ առաւելաւ, եւ որ սա-
կաւն՝ ոչ նուազեցաւ։
16 Դգ. Բայց շնո՛րհք Աստուծոյ, որ արկ
զնոյն փոյթ վասն ձեր ի սիրտ Տի-
17 տոսի. Զի զաղաչանսն ընկալաւ, եւ
փութացաւ յօժարագոյնս [5]դիմեաց գալ
18 առ ձեզ։ Եւ առաքեցաք ընդ նմա զեղ-
բայրն, որոյ գովութիւնն յաւետարա-
նի անդ է ընդ ամենայն եկեղեցիս։
19 Եւ ոչ այսչափ միայն, այլ եւ ձեռ-
նադրեալ յեկեղեցեաց անտի՝ նշդեհա-
կից մեր եղեւ ի շնորհս յայսմիկ, որ
պաշտին ի մէնջ ի փառս Տեառն եւ ի
20 [6]մեր յօժարութիւն։ Բայց զայս խորհէ-
աք իսկ թէ զուցէ արատ ոք ինչ դնի-
ցէ [7]ի հաստատութեանս յայսմիկ որ
21 պաշտեցաւս ի մէնջ։ Քանզի խորհիմք
զբարիս ոչ միայն առաջի Տեառն, այլ
22 եւ առաջի մարդկան։ Եւ առաքեցաք
ընդ նոսա զեղբայրն մեր զոր ընտրե-
ցաք ի բազում իրս՝ բազում անգամ
պինդ զտեալ, եւ առաւել եւս այժմ
23 պնդագոյն՝ յուսով մեծաւ ի ձեզ։ Բայց
եթէ վասն Տիտոսի ինչ բանք են, իմ
հաւասար է եւ ձեր գործակից. եւ
եթէ եղբարք մեր, առաքեալքն եկե-
24 ղեցւոյ եւ փառք Քրիստոսի։ Եւ արդ
զհանդէս սիրոյ ձերոյ եւ զմերոյ պար-
ծանաց վասն ձեր՝ ի դոսա ցուցջիք
յանդիման ամենայն եկեղեցեաց։

## Գլ. Թ

1 Դդ. Այլ վասն պաշտամանն որ ի
սուրբսն է, աւելի է ինձ եւ գրել առ
2 ձեզ։ Զի գիտեմ զյօժարութիւն ձեր,
զոր վասն ձեր պարծեցեալ եմ ի մէջ
Մակեդոնացւոցն, թէ Աքայեցիքն ի
հերուն հետէ պատրաստ են, եւ ձեր
3 նախանձն զբազումս յորդորեաց։ Եւ
առաքեցաք զեղբարսն, զի մի՛ պար-
ծանքն մեր որ վասն ձեր՝ ընդունայն
լինիցին ի մասինդ յայդմիկ, այլ որպէս
ասէի իսկ, պատրաստագոյնք գտա-
4 նիջիք. Գուցէ յորժամ գայցեն ընդ
մեզ Մակեդոնացիքն, եւ գտանիցեն
զձեզ անպատրաստս, եւ ամաչեսցուք
մեք, (զի մի՛ ասասցուք թէ դուք,)

[1]Յոմն, աղաչէին զմեզ
[2]Յօրին. պակասի. յայլ՝ ընդունել մեզ
[3]Յոմն, Յաղաչելն մեր [4]Ոմանք, ի ձէնջ ի մեզ

[5]Ի Յոմնսն պակասէ [7]Յոմն, յառատութեանս
[6]Ոմանք, ձեր

5 [1]ի մասինդ յայդմիկ [2]պարծանաց ։ Արդ
կարեւոր համարեցայ աղաչել զեղբարս,
զի յառաջագոյն եկեսցեն առ ձեզ, եւ
յառաջագոյն պատրաստեսցեն զյառա-
ջագոյն խոստացեալ օրհնութիւնն ձեր
ի պատրաստի ունել, այնպէս իբրեւ
զօրհնութիւն, եւ մի՛ իբրեւ զագա-
6 հութիւն ։ Քանզի [3]զայդ որ սերմանէ
ճշգելով՝ ճշգելով եւ հնձեսցէ, եւ որ
սերմանէ առատութեամբ՝ առատու-
7 թեամբ եւ հնձեսցէ ։ Իւրաքանչիւր
որպէս եւ յօժարեսցի ոք սրտիւ, մի՛
առ հարկի եւ տրտմութեան, քանզի
զտուրս զուարթառատս սիրէ Ա.ս-
8 տուած ։ Այլ կարող է Աստուած զա-
մենայն շնորհս առաւելուլ ի ձեզ, զի
յամենայնի յամենայն ժամ զամենայն
բաւականութիւն ընկալեալ՝ առաւե-
լուցուք յամենայն գործս բարութեան,
9 Որպէս եւ գրեալ է, Սփռեաց եւ ետ
տնանկաց, արդարութիւն նորա մնայ
յաւիտեան ։
10 Դե. Այլ այն որ պարգեւէ սերմն
սերմանահանաց, եւ հաց ի կերակուր՝
պարգեւեսցէ եւ բազմացուսցէ զսեր-
մանիս ձեր, եւ աճեցուսցէ զարդիւնս
11 արդարութեան ձերոյ. Յամենայնի մե-
ծացեալք ամենայն առատութեամբ՝ որ
յորինէն մեւք գոհութիւն Աստուծոյ ։
12 Զի պաշտօն հարկիս այսորիկ ոչ միայն
առ ի լնուլ զպակասութիւն սրբոցն է,
այլ եւ առաւելուլ բազմօք գոհութիւն
13 Աստուծոյ. Հանդիսիւ պաշտամանս
այսորիկ փառաւորել զԱստուած ի վե-
րայ հնազանդութեան խոստովանու-
թեան ձերոյ յաւետարանն Քրիստոսի,
եւ առատութեամբ հաղորդութեանն
14 ի նոսա եւ յամենեսին ։ Եւ նոցա ա-
ղօթք վասն ձեր, քանզի անձկացեալ
են առ ձեզ վասն առաւել շնորհացն
15 Աստուծոյ որ ի ձեզ ։ Այլ շնո՛րհք Աս-
տուծոյ ի վերայ անպատում պարգե-
ւացն նորա ։

## Գլ. Ժ

1 Այլ ես իսկ Պաւղոս աղաչեմ զձեզ
հեզութեամբն եւ հանդարտութեամբ
Քրիստոսի, որ յանդիման ձեզ իբրեւ
տառապեալ մի եմ ի միջի ձերում.
բայց ի հեռուստ համարձակիմ առ ձեզ ։
2 Աղաչեմ զի մի՛ ի մօտոյ եւեթ համար-
ձակիցիմ վստահութեամբ, [4]կամ հա-
մարիցիմ յանդգնել ի վերայ ումանց որ
կարծեն զմէնջ եթէ ըստ մարմնոյ գնայ-
3 ցեմք ։ Զի թէպէտ եւ մարմնով գնամք,
այլ ոչ եթէ ըստ մարմնոյ զինուորիմք ։
4 (Զի զէն զինուորութեան մերոյ ոչ է
մարմնաւոր, այլ զօրաւոր յԱստուծոյ
5 առ ի քակելոյ զամուրս.) Զխորհուրդս
քակեմք, զամենայն բարձրութիւն
հպարտացեալ ի վերայ գիտութեանն
Աստուծոյ, եւ գերեմք զամենայն միտս
6 ի հնազանդութիւն Քրիստոսի. Եւ ի
պատրաստի ունիմք խնդրել զվրէժ ա-
մենայն անհնազանդութեան, յորժամ
ձեր եւս հնազանդութիւնդ կատա-
րեսցի ։
7 Դզ. Ըստ [3]իւրաքանչիւր [5]երեսաց
գիտեսջիք". եթէ ոք վստահ յանձն իցէ
[6]Քրիստոսի լինել", զայս խորհեսցի
դարձեալ ի միտս իւր, թէ որպէս նայն
8 Քրիստոսի է, նոյնպէս եւ [7]մեք ։ Զի
թէ առաւել եւս պարծեցայց վասն իշ-
խանութեանս մերոյ, զոր ետ մեզ Տէր
ի շինել եւ ոչ ի քակել զձեզ, ոչինչ ա-
9 մաչեցից ։ Զի մի՛ թուեցայց իբրեւ ահ
10 ինչ արկանել ձեզ թղթովքս. [8]Ասիցեն,
Թուղթքս ծանունք են եւ սաստիկք,
բայց տեսիլ մարմնոյ՝ տկար, եւ բանն
11 արհամարհեալ. Զայս խորհեսցի այն-
պիսին, զի որպիսիք եմք բանիւք
թղթոցդ ի հեռուստ, նոյնպիսիք եւ ի
12 մօտոյ արդեամբք ։ Քանզի ոչ իշխեմք
կշռել եւ հաւասարել զանձինս մեր ո-
մանց, որ զանձինս իւրեանց [3]ձեզ ըն-
ծայեցուցանեն, այլ անձամբ յանձինս՝
զանձինս չափեն, եւ ի կշռել անձամբ
13 զանձինս՝ ոչ առնուն ի միտ ։ Այլ մեք
ոչ եթէ յանչափս ինչ պարծեսցուք,
այլ ըստ չափոյ կանոնին զոր բաժա-
նեաց մեզ Աստուած չափով հասանել
14 մինչեւ առ ձեզ ։ Իբր ոչ եթէ հասու
ինչ չիցեմք ի ձեզ, եւ ձգտեցուցանի-
ցեմք զանձինս, քանզի մինչեւ առ ձեզ
հասաք աւետարանաւն Քրիստոսի ։
15 Եւ ոչ յանչափս ինչ պարծիմք օտար

[1]Յոմն, ի վստահութեանդ
[2]Յամենա պակասէ
[3]Ի Յոմնսն պակասէ
[4]Յոմն, որով
[5]Ոմանք, երեսա՞ց դիտէք
[6]Ոմանք, Քրիստոսի ծառայ լինել
[7]Ոմանք, մեք Քրիստոսի
[8]Ի Յոմնսն, ոմանք՝ Ասեն, այլք՝ Ասէ

վաստակօք, բայց յոյս մի ունիմք զաճ-
մանն հաւատոց ձերոց այդրէն ի ձեզ
մեծանալոյ՝ ըստ կանոնիս մերոյ յա-
16 ռաւելութիւն. Ի վեր եւս քան զձեզ
աւետարանել, ոչ օտար կանոնաւ ի
17 պատրաստականս ինչ պարծել: Զի որ
պարծիցին՝ ի Տէր պարծեսցի:
18 ԲԿ. Զի ոչ եթէ որ զանձն իւր ըն-
ծայեցուցանէ՝ նա է ընտրեալ, այլ՝ զոր
Տէրն ընծայեցուցանէ:

## ԳԼ. ԺԱ

1 Լաւ էր եթէ ներէիք փոքր մի եւ ի-
մում անզգամութեանս. այլ եւ ան-
2 սացէք իսկ: Նախանձեցուցանեմ զձեզ
ի նախանձն Աստուծոյ. զի խօսեցայ
զձեզ առն միում, իբրեւ զկոյս մի
սուրբ յանդիման կացուցանել Քրիստո-
3 սի: Բայց երկնչիմ, գուցէ որպէս օձն
խաբեաց զԵւա խորամանկութեամբ
իւրով, ապականեսցին միտք ձեր ի
4 միամտութենէն որ ի Քրիստոս: Զի
եթէ [1]որ զալոցն իցէ՝՝ այլ [2]Քրիստոս
քարոզիցէ զոր մեքն ոչ քարոզեցաք,
կամ ոգի օտար առնուցուք զոր ոչ
առէք, կամ աւետարան օտար զոր ոչ
ընկալարուք, բարւոք անսայիք [3]նոցա:
5 Բայց ես այսպէս համարիմ, թէ ոչինչ
իւիք պակաս իցեմ քան զկաւ առա-
6 քեալսն: Թէպէտ եւ տգէտ եւս իցեմ
բանիւ, այլ ոչ եթէ գիտութեամբ.
սակայն յամենայնի յայտնեցաք զան-
7 ձինս ամենեւին առ ձեզ: Եւ եթէ
մե՞ղս ինչ գործեցի զի զանձն խոնար-
հեցուցի, եւ այն՝ զի դուք բարձրաս-
ջիք, զի ձրի զաւետարանն Աստուծոյ
8 աւետարանեցի ձեզ: Զայլ եկեղեցիս
կողոպտեցի, առեալ թոշակ ի ձեր
9 սպասաւորութիւն: Եւ յորժամ եկի
առ ձեզ, թէպէտ եւ պակասեաց ինչ,
ոչ զոք ի ձէնջ ձանձրացուցի, զի զպա-
կասութիւնն իմ լցին եղբարքն եկեալք
ի Մակեդոնացւոց. եւ յամենայնի ա-
ռանց ծանրանալոյ ձեզ զանձն իմ պա-
10 հեցի եւ պահեցից: Զի գոյ յիս ճշմար-
տութիւնն Քրիստոսի:
ԲԴ. Զի պարծանքս այս՝ ոչ արգելցին
11 յինէն ի կողմանս Աքայեցւոց: Ընդէ՞ր.
իբրու թէ ո՞չ սիրիցեմ զձեզ. զայն Աս-
12 տուած գիտէ. Զոր առնեմն, եւ արա-
րից, զի հատից զպատճառս այնոցիկ
որ զպատճառսն կամիցին. զի որով
պարծինն, եւ նոքա իբրեւ զմեզ գտա-
13 նիցին: Զի այնպիսիքն սուտ առա-
քեալք, մշակք նենգաւորք, կերպա-
րանին ի կերպարանս առաքելոց Քրիս-
14 տոսի: Եւ չեն ինչ զարմանք, քանզի
եւ ինքն Սատանայ կերպարանի ի
15 հրեշտակ լուսոյ: Եւ ոչինչ է մեծ թէ
եւ պաշտօնեայք նորա կերպարանին
իբրեւ պաշտօնեայք արդարութեան.
որոց կատարածն եղիցի ըստ գործոց
16 իւրեանց: Դարձեալ ասեմ, մի՛ ոք հա-
մարեսցի զիս անզգամ, ապա թէ ոչ՝
գոնէ իբրեւ զանզգամ ընկալարուք զիս,
զի եւ ես փոքր մի ինչ պարծեցայց:
17 Եւ զոր խօսիմս՝ ոչ եթէ ըստ Տեառն
ինչ խօսիմ, այլ իբրեւ անզգամու-
թեամբ՝ ըստ կարգի այդց պարծանաց:
18 Եւ քանզի բազումք պարծին ըստ
19 մարմնոյ, եւ ես պարծեցայց: Մտա-
ցեւր իմն անսայիք անմտացն ձերովդ
20 իմաստութեամբ: Քանզի անսայք [3]եթէ
ոք խաբէ զձեզ,՝՝ եթէ ոք [4]ծառայե-
ցուցանէ, եթէ ոք ուտէ զձեր, եթէ
ոք առնու ինչ, եթէ ոք հպարտանայ,
եթէ ոք զձեզ յանդիման հարկանէ.
21 Ըստ անարգանացդ ասեմ, իբրեւ թէ
մեք տկարացաք արդեւք. յոր ինչ ոք
համարձակիցի, (անզգամութեամբ ա-
22 սեմ,) համարձակիմ եւ ես: Եբրայե-
ցի՞ք իցեն, եւ ես. Իսրայելացի՞ք իցեն,
եւ ես. զաւակ Աբրահամո՞ւ իցեն, եւ
23 ես. Պաշտօնեայք Քրիստոսի՞ իցեն,
(յանզգնագոյնս ասացից թէ) առաւել
եւս ես. եթէ վաստակօք, առաւել. եթէ
զանիւք, եւս առաւել. եթէ բանտիւ,
աւելի քան զնոսա. եթէ մահուամբք՝
24 բազում անգամ. Ի Հրէից հնգիցս քա-
25 ռասուն միով պակաս առի. Երիցս
ձաղկեցայ. մի անգամ քարկոծ եղէ.
երիցս նաւակոծ եղէ. զտիւ եւ զգի-
26 շեր յանդունդս տառապեցայ. Ի ճա-
նապարհս՝ բազում անգամ. վիշտս՝ ի
գետոց, վիշտս՝ յաւազակաց, վիշտս՝
յազգէ, վիշտս՝ ի հեթանոսաց, վիշտս՝
ի քաղաքի, վիշտս՝ յանապատի, վիշտս՝
ի ծովու, վիշտս՝ ի սուտ եղբարց.

[1]Յոյնն, որ զայն
[2]Բազումք, Յիսուս
[3]Ի Յունին պակասէ
[4]Յոյնն, ծառայեցուցանէ զձեզ

27 Ի ջանս եւ ի վաստակս, ի տքնութիւնս՝
բազում անգամ, ի քաղց եւ ի ծարաւ,
ի պահս՝ բազում անգամ, ի ցուրտ եւ
28 ի մերկութեան ։ [1]Թող զայլ նեղու-
թիւնսն, եւ զի համապազ խուժանն
ի վերայ իմ կուտէր, եւ հոգք ամե-
29 նայն եկեղեցեացն"։ Ո՞ հիւանդանայ,
եւ ոչ ես հիւանդանամ. ո՞ գայթակղի,
եւ ոչ ես տապանամ։
30 ԲՉ. Եթէ պարծել ինչ պարտ իցէ,
31 զտկարութեանն պարծեցայց ։ Աս-
տուած եւ Հայր Տեառն մերոյ Յիսուսի
գիտէ, որ է օրհնեալ յաւիտեանս, զի
32 ոչ ստեմ։ Ի Դամասկոս ազգապետն
Արետայ արքայի պահէր զքաղաքն Դա-
33 մասկացւոց ունել զիս. Եւ ընդ պա-
տուհանն վանդակաւ կախեցայ ընդ
պարիսպն, եւ փախեայ ի ձեռաց նորա։

## ԳԼ. ԺԲ

1 Արդ պարծել ինչ պարտ իցէ, այլ
օգնէ ինչ ոչ. բայց եկից ի տեսիլս եւ
2 ի յայտնութիւնս Տեառն։ Գիտեմ այր
մի ի Քրիստոս յառաջ քան զչորեք-
տասան ամ. (եթէ մարմնով, ոչ գի-
տեմ, եւ եթէ առանց մարմնոյ, ոչ
գիտեմ, Աստուած գիտէ.) յափշտա-
կեալ զայնպիսին մինչեւ յերրորդ երկ-
3 նից։ Եւ գիտեմ զայնպիսի այր. (եթէ
մարմնով եւ եթէ առանց մարմնոյ՝ ոչ
4 գիտեմ, Աստուած գիտէ.) Զի յափշտա-
կեցաւ ի դրախտն, եւ լուաւ բանս
անճառս, զոր ոչ է պարտ մարդոյ խօ-
5 սել։ Վասն այնպիսւոյն պարծեցայց.
այլ վասն անձին ինչ ոչ պարծեցայց.
6 բայց եթէ ի տկարութիւնս։ Զի եթէ
եւ կամիցիմ պարծել, ոչ եղէց անզգամ,
քանզի զարդարն ասեմ. այլ անխայեմ,
գուցէ ոք համարիցի ինչ յիս աւելի
քան զոր տեսանիցէ յիս կամ լսիցէ
7 յինէն։ Եւ զի մի՛ առաւելութեամբ
յայտնութեանցն հպարտացայց, տուաւ
ինձ խայթ մարմնոյ, հրեշտակ Սատան,
8 կոփել զիս, զի մի՛ հպարտացայց։ Եւ
վասն այնորիկ երիցս անգամ աղաչեցի
9 զՏէր զի ի բաց արասցէ յինէն։ Եւ
ասէ ցիս, Շատ են քեզ շնորհք իմ, զի
զօրութիւն իմ ի տկարութեան կա-
տարի. եւ արդ լաւ եւս լիցի ինձ
պարծել ի տկարութիւնս, զի բնակես-
ցէ յիս զօրութիւնն Քրիստոսի։
10 ԳԴ. Վասն որոյ հաճեալ եմ ընդ
տկարութիւնս, ընդ թշնամանս, ընդ
վիշտս, ընդ հալածանս եւ ընդ նեղու-
թիւնս վասն Քրիստոսի. զի յորժամ
11 տկարանամ, յայնժամ զօրանամ։ Եղէ
[2]անզգամ, քանզի դուք [3]ստիպեցէք.
զի ինձ պարտ էր ի ձէնջ վկայութիւն
առնուլ թէ ոչինչ պակաս գտայ քան
զկաւ առաքեալսն, [4]զի թէպէտ եւ ես
12 ոչինչ եմ։ Սակայն նշանք առաքելոյ
գործեցան ի ձեզ ամենայն համբերու-
թեամբ, նշանօք եւ արուեստիւք եւ
13 զօրութեամբք։ Եւ արդ զի՞նչ իցէ ո-
րով պակաս գտայք քան զայլ եկեղե-
ցիս, բայց եթէ այնու զի ես զձեզ ոչ
ձանձրացուցի. շնորհեցէք ինձ զվնասդ
զայդ։
14 Ահաւասիկ այս երիցս անգամ պատ-
րաստեալ եմ գալ առ ձեզ, եւ ձեզ բեռն
ինչ ոչ եղէց, զի ոչ խնդրեմ ինչ զձեր,
այլ զձեզ. քանզի ոչ պարտին որդիք
15 հարց գանձել, այլ հարք՝ որդւոց։ Բայց
ես մտադիւրութեամբ ծախեցից, եւ
ծախեցայց վասն անձանց ձերոց, զի
թէպէտ եւ յառաւել սիրոյն զձեզ՝ սա-
կաւ սիրիցիմ։
16 Այլ գրեթէ ես ոչինչ ծանրացայ ձեզ,
այլ քանզի խորագէտ էի, խեղօք կալայ
17 զձեզ։ Միթէ որովք առաքեցին առ ձեզ՝
18 նոքօք ինչ աղահեցի՞ ի ձէնջ։ Աղաչեցի
զՏիտոս եւ առաքեցի ընդ նմա զեղ-
բայրն, միթէ աղահեա՞ց ինչ զձեր Տի-
տոս. ո՞չ նովին ոգւով գնացաք. ո՞չ
նովին շաւղօք [4]շրջեցաք։
19 ԳՁ. Դարձեալ համարիցիք եթէ յողոք
անկեալ ինչ ձեզ աղերսիցե՞մք. առա-
ջի Աստուծոյ ի Քրիստոս խօսիմք, զի
ամենայն ինչ, սիրելիք, վասն ձերոյ
20 շինութեան է։ Այլ երկնչիմ, գուցէ
եկեալ, ոչ որպէս ես կամիմ՝ գտա-
նիցեմ զձեզ. եւ ես գտանիցիմ ձեզ՝
որպէս եւ դուք ոչ կամիցիք. գուցէ
[4]զարձեալ՝ հեռ, նախանձ, սրտմտու-
թիւնք, գրգռութիւնք, չարախօսու-
թիւնք, քսութիւնք, [4]հպարտու-
թիւնք, ամբարտաւանութիւնք, խռո-
21 վութիւնք. Գուցէ դարձեալ, յորժամ

[1]Յոյնն, Թող զորս արտաքինքն են, որ նեղէն զիս հանապազ՝ է հոգ ամենայն եկեղեցեացն

[2]Ոմանք, անզգամ, զի պարծեցայ

[3]Յոյնն, ստիպեցէք զիս  [4]Ի Յոյնն պակասի

*դայցեմ, նկուն լինչ առնիցէ զիս Աս-*
*տուած իմ առ ձեզ. եւ սուգ առնու-*
*ցում վասն բազմաց յառաջագոյն մե-*
*ղուցելոց, եւ ոչ ապաշխարելոց ի վե-*
*րայ պղծութեան եւ պոռնկութեան*
*եւ գիջութեան զոր գործեցին ։*

## ԳԼ. ԺԳ

1 **Ա**յս *երիցս անգամ գամ առ ձեզ, զի*
*ի բերանոյ երկուց եւ երից վկայից*
2 *հաստատեսցի ամենայն բան ։ Ցառաջ*
*ասացի, եւ զարձեալ կանխաւ ասեմ*
[1]*յանզիման երկիցս անգամ, եւ այժմ*
*ի բացուստ* [2]*գրեմ յառաջագոյն յան-*
*ցուցելոցն եւ այլոցն ամենեցուն, զի*
*եթէ եկից դարձեալ, ոչ խնայեցից.*
3 *Եթէ զփորձ ինչ խնդրէք զՔրիստոսի*
*որ խօսի ընդ ձեզ խօսի, որ հզօրա-*
*ցեալն է ի ձեզ, եւ ոչ տկարացեալ ։*
4 *Զի թէպէտ եւ խաչեցաւ* [3]*ի մերմէ*
*տկարութենէ՝՝, այլ կենդանի է զօրու-*
*թեամբն Աստուծոյ. եւ մեք թէպէտ*
*եւ տկարանայցեմք* [4]*վասն նորա՝՝, այլ*
*կենդանի լիցուք ընդ նմա զօրու-*
*թեամբն* [5]*Աստուծոյ ։*
5 *ԴԿ. Փորձեցէք զանձինս ձեր, եթէ*
*կայցէք ի նոյն հաւատս. քննեցէք զան-*
*ձինս, եթէ ո՞չ գիտէք զանձինս, զի*
*Քրիստոս Յիսուս ի ձեզ է, բայց եթէ*
6 *անպիտանք իցէք ։ Այլ ակն ունիմ թէ*
*գիտիցէք, զի մեք ոչ եմք անպիտանք ։*
7 *Այլ խնդրեմք յԱստուծոյ զի մի՛ ինչ*
[6]*արասցէ ձեզ չար՝՝. ոչ զի մեք ընտիրք*
*երեւեսցուք, այլ զի դուք զբարիս*
*գործիցէք, եւ մեք անպիտանք գտա-*
8 *նիցիմք ։ Զի ոչ կարեմք ինչ հակա-*
*ռակ կալ ճշմարտութեանն, այլ վերա-*
9 *կացու եմք ճշմարտութեանն ։ Խրախ*
*եմք, յորժամ մեք տկարանայցեմք,*
*եւ դուք զօրաւորք իցէք. զգոյն խակ*
*եւ աղօթս առնեմք՝ զձեր հաստատու-*
10 *թիւնդ ։ Վասն այնորիկ զայս ի հե-*
*ռուստ գրեմ, զի մի՛ յորժամ եկից,*
*սաստկութեամբ վարեցայց ըստ իշ-*
*խանութեանս, զոր ետ ինձ Տէր ի շի-*
*նել եւ ոչ ի քակել ։*
11 *Այսուհետեւ, եղբարք, ողջ լերուք,*
*հաստատուն կացէք, մխիթարեցարուք,*
*միաբան լերուք, խաղաղութիւն արա-*
*րէք. եւ Աստուած խաղաղութեան եւ*
12 *սիրոյ եղիցի ընդ ձեզ ։ Ողջոյն տուք*
*միմեանց ի համբոյր սրբութեան. ող-*
*ջոյն տան ձեզ սուրբք ամենայն ։*
13 *Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-*
*տոսի եւ սէրն Աստուծոյ եւ հաղոր-*
*դութիւն Հոգւոյն Սրբոյ ընդ ձեզ ա-*
*մենեսին ։ Ամէն ։*

*Առ Կորնթացիս երկրորդ գրեցաւ ի Փի-*
*լիպպեայ ի ձեռն Տիտոսի եւ Ղուկայ ։*

---

[1]Ոմանք, որպէս թէ յանդիման
[2]Յոմանս պակասէ
[3]Յոմն, ի տկարութենէ
[4]Ի Յոմանս, ոմանք, ի նմա, այլք՝ ընդ նմա
[5]Բոլորովք, Աստուծոյ ի ձեզ

[6]Յոմն, առնիցէք դուք չար

# ԱՌ ԳԱՂԱՏԱՑԻՍ

## ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 դդ. ՊԱՒՂՈՍ, առաքեալ ոչ ի մարդ-
կանէ եւ ոչ ի ձեռն մարդոյ, այլ ի
ձեռն Յիսուսի Քրիստոսի եւ Աստու-
ծոյ Հօր որ յարոյց զնա ի մեռելոց,
2 Եւ որ ընդ իս են եղբարք ամենեքին,
3 եկեղեցեացդ Գաղատացւոց. Շնորհք
ընդ ձեզ եւ խաղաղութիւն յԱստուծոյ
ի Հօրէ եւ ի Տեառնէ մերմէ Յիսուսէ
4 Քրիստոսէ, Որ ետ զանձն իւր վասն
մեղաց մերոց, զի զմեզ փրկեսցէ յաշ-
խարհէ աստի չարէ ըստ կամացն Ա-
5 ստուծոյ եւ Հօր մերոյ. Որում փառք
յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։
6 Զարմանամ զի այդպէս վաղվաղակի
փոփոխիք յայնմանէ որ կոչեացն զձեզ
ի շնորհսն Քրիստոսի յայլ աւետարան.
7 Որ ոչ գոյ այլ, բայց եթէ լիցին ոմանք
որ խռովեցուցանիցեն զձեզ, եւ կա-
միցին շրջել զաւետարանն Քրիստոսի։
8 Այլ թէ մեք կամ հրեշտակ յերկնից
աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր
աւետարանեցաքն ձեզ, նզովեալ լիցի։
9 Որպէս յառաջագոյնն ասացաք, եւ արդ
դարձեալ ասեմ, Եթէ ոք աւետարա-
նեսցէ ձեզ աւելի քան զոր առէքն,
10 նզովեալ լիցի։ Արդ մարդկա՞ն հաճոյ
լինիցիմ, թէ՝ Աստուծոյ. կամ խնդրի-
ցեմ մարդկա՞ն հաճոյ լինել. եթէ տա-
կաւին մարդկան հաճոյ լինէի, ապա
Քրիստոսի ծառայ ոչ էի։
11 դձ. Ցուցանեմ ձեզ, եղբարք, զա-
ւետարանն որ աւետարանեցաւ յինէն,
12 զի ոչ է ըստ մարդոյ. Քանզի եւ ոչ
ես ի մարդոյ առի, եւ ոչ ուսայ յու-
մեքէ, այլ ի յայտնութենէն Յիսուսի
13 Քրիստոսի։ Քանզի լուեալ իսկ է ձեր
զիմ գնացսն որ երբեմն ի Հրէութեան
անդ, զի անչափ հալածէի զեկեղեցին
Աստուծոյ, եւ աւար հարկանէի զնա։
14 Եւ յառաջադէմ էի ի Հրէութեանն քան
զբազում հասակակիցս իմ որ յազգին
իմում էին. առաւել նախանձախնդիր
էի իմոյ հայրենի աւանդութեանցն։
15 Այլ յորժամ կամեցաւ Աստուած (ո-
րոշեաց զիս յորովայնէ մօր իմոյ, եւ
16 կոչեաց ի ձեռն շնորհաց իւրոց,) Յայտ-
նել զՈրդին իւր [1]ինեւ, զի աւետա-
րանեցից զնա ի հեթանոսս, անդէն
վաղվաղակի ոչինչ զգացուցի մարմնոյ
17 եւ արեան, Եւ ոչ ելի յԵրուսաղէմ
առ որ յառաջագոյն քան զիս առաք-
եալքն էին, այլ չոգայ յԱրաբիա, եւ
18 դարձեալ դարձայ ի Դամասկոս։ Ապա
յետ երից ամաց ելի յԵրուսաղէմ տե-
սանել զՊետրոս, եւ եղէ առ նմա ա-
19 ւուրս հնգետասան։ Զայլ ոք յառաքե-
լոց անտի ոչ տեսի, բայց միայն զՅա-
20 կովբոս զեղբայրն Տեառն։ Այլ զոր
գրեմս առ ձեզ, ահաւասիկ առաջի
21 Աստուծոյ, զի ոչ ստեմ։ Ապա եկի ի
22 կողմանս Ասորւոց եւ Կիլիկեցւոց։ Եւ
յանծանօթս էի երեսօք եկեղեցեացն
[2]որ ի թլփատութենէ անտի էին" ի
23 Քրիստոս։ Բայց զի լսելով լուեալ էր
թէ Որ հալածէրն զմեզ յայնժամ, արդ
աւետարանէ զհաւատսն զոր երբեմն
24 խախտէր. Եւ փառաւոր առնէին ինեւ
զԱստուած։

### ԳԼ. Բ

1 եկ. Ապա յետ ամաց չորեքտասանից
միւսանգամ ելի յԵրուսաղէմ ընդ Բառ-
2 նաբայ՝ առեալ ընդ իս եւ զՏիտոս։ Եւ
ելի ըստ յայտնութեանն. եւ զդացու-
ցի նոցա զաւետարանն զոր քարոզէի

---

[1] կամ, յիս

[2] Յոյնն, Հրէաստանի որ

*ի հեթանոսս , առանձինն այնոցիկ որ
կարծեալքն էին , գուցէ ընդունայն ինչ
ընթացեալ իցեմ կամ ընթանայցեմ ։
3 Այլ եւ ոչ Տիտոս որ ընդ իս ի հեթա-
նոսաց էր՝ բռնադատեցաւ թլփատել ։
4 Այլ վասն սպրդողաց սուտ եղբարցն ,
որք սպրդեցին մտանել դիտել զազա-
տութիւնն մեր զոր ունիմք ի Քրիս-
տոս Յիսուս . զի զմեզ ծառայեցուս-
5 ցեն ։ Որոց եւ ոչ առ ժամանակ մի
անսացաք հնազանդութեանն , զի ճշ-
մարտութիւն աւետարանին հաստա-
6 տեսցի առ ձեզ ։ Բայց զկարծելոցն եթէ
իցեն ինչ , որպիսիք ոք երբեմն էին ,
չէ ինչ ինձ փոյթ . քանզի Աստուած
ակն մարդկան ոչ առնու . զի ինձ կար-
ծեալքն այնպիսի ինչ ոչ զգացուցին .
7 Այլ զնորին հակառակն , իբրեւ տեսին
եթէ հաւատացեալ է ինձ աւետարանն
անթլփատութեան , որպէս Պետրոսի՝
8 թլփատութեան . (Զի որ յաջողեացն
Պետրոսի յառաքելութիւն թլփատու-
թեանն , յաջողեաց եւ ինձ ի հեթա-
9 նոսս .) Իբրեւ գիտացին զշնորհսն որ
տուեալ էին ինձ , Յակոբոս եւ Կեփաս
եւ Յովհաննէս որ կարծեալ սիւնքն
էին , ձեռն ետուն հաւանութեան ինձ
եւ Բառնաբայ . զի մեք՝ ի հեթանոսս ,
10 եւ նոքա՝ ի թլփատութեանն . Բայց
միայն զի զաղքատսն յիշեսցուք , զոր
եւ ես փութացայ զնոյն առնել ։
11 ԵԳ. Այլ յորժամ եկն [1]Կեփաս յԱն-
տիոք , ընդդէմ դարձայ նորա , քանզի
12 զօգ իբրեւ ստգտեալ իմն էր ։ Քանզի
մինչչեւ եկեալ էին ոմանք առ ի Յա-
կոբայ , ընդ հեթանոսս ուտէր [2]ան-
խտիր . իսկ իբրեւ եկին , զատանէր
եւ որոշէր զանձն՝ երկուցեալ յայն-
ցանէ որ ի թլփատութենէ անտի էին ։
13 Եւ կեղծաւորեցան ընդ նմա եւ այլ
Հրեայքն , մինչեւ Բառնաբաս անգամ
խոնարհեցաւ ի նոցա կեղծաւորու-
14 թիւնն ։ Այլ իբրեւ տեսի թէ ոչ ուղիղ
գնան ի ճշմարտութիւն աւետարանին ,
ասեմ [3]ցԿեփաս առաջի ամենեցուն ,
Եթէ դու որ Հրեայդ ես՝ հեթանոսա-
բար եւ ոչ հրէաբար կեաս , զիա՞րդ
ստիպես հեթանոսաց լինել հրեաբէն ։
15 Զի մեք բուն Հրեայք եմք , եւ ոչ
16 ի հեթանոսաց մեղաւորք ։ Զայս գի-
տեմք եթէ ոչ արդարանայ մարդ ի
գործոց օրինաց , եթէ ոչ ի հաւատոցն
Յիսուսի Քրիստոսի . եւ մեք ի Քրիս-
տոս Յիսուս հաւատացաք , զի արդա-
րասցուք ի հաւատոյն Քրիստոսի , եւ
ոչ ի գործոց օրինաց . զի ի գործոց օ-
րինաց ոչ արդարասցի ամենայն մար-
17 մին ։ Իսկ եթէ մինչ խնդրիցեմք ար-
դարանալ ի Քրիստոս , եւ գտանիցիմք
մեղաւորք , ապա ուրեմն Քրիստոս
մեղա՞ց պաշտօնեայ եղեւ . քաւ լիցի ։
18 Զի եթէ զոր քակեցին՝ զնոյն միւսան-
գամ շինիցեմ , ապա յանցաւոր զանձն
19 իմ ես ինձէն երեւեցուցանեմ ։ Զի ես
օրինօք օրինացն մեռայ , զի Աստուծոյ
20 կեցից . [2]Եւ ընդ Քրիստոսի ի խաչ [4]ե-
լից . եւ կենդանի եմ այսուհետեւ , ոչ
ես՝ այլ կենդանի է յիս Քրիստոս ։*

ԵԶ. *Այլ որ այժմս կեամ մարմնով ,
հաւատովք Որդւոյն Աստուծոյ կեամ ,
որ սիրեացն զիս , եւ մատնեաց զանձն
21 վասն իմ ։ Եւ ես ոչ անարգեմ զշնորհսն
Աստուծոյ . զի եթէ յօրինաց անտի էր
արդարութիւն , ապա Քրիստոս զուր
մեռաւ ։*

ԳԼ. Գ

*1 Ո անմիտ Գաղատացիք , ո՞ նախանձ
արար զձեզ[5]. որոց դրեթէ առաջի ա-
չաց Յիսուս Քրիստոս գրեցաւ ի խաչ
2 ելեալ ։ Զայս միայն կամիմ ուսանել
ի ձէնջ . ի գործո՞ց օրինաց զՀոգին
ընկալարուք , եթէ ի լրոյ հաւատոց ։
3 Այդչափ անմի՞տ էք . սկսեալ հոգւով ,
4 եւ արդ մարմնո՞վ վախճանիք ։ Եւ այն-
չափ անցք անցին ընդ ձեզ զո՞ւր , եթէ
5 իցէ զուր ։ Իսկ արդ որ բաշխեաց ի
ձեզ զՀոգին եւ յաջողեաց ի ձեզ զզօ-
րութիւնս՝ ի գործո՞ց օրինաց էր , եթէ
6 ի լրոյ հաւատոյ ։ Որպէս Աբրահամ
հաւատաց յԱստուած , եւ համարեցաւ
7 նմա յարդարութիւն ։ [6]Գիտիցէ՞ք ար-
դեւք՝՝, զի որք ի հաւատոց անտի են ,
8 նոքա են որդիք Աբրահամու ։ Յառա-
ջագոյն գիտէր գիր , եթէ ի հաւատոց
անտի արդարացուցանէ Աստուած զհե-
թանոսս , յառաջագոյն խոստացաւ*

[1]Ոմանք, Պետրոս
[2]ի Յօրինակին պակասէ
[3]Ոմանք, զՊետրոս

[4]Յօրինակն, ելի
[5]Ոմանք յաւելուն, ոչ հնազանդել ճշմարտութեան
[6]Յօրինակն, Ապա գիտասջիք

Աբրահամու, թէ ի քեզ օրհնեսցին ա-
9 մենայն ազգք։ Ապաւասիկ որք ի հա-
ւատոց անտի են՝ օրհնին ընդ հաւա-
10 տացելոյն Աբրահամու։ Զի որ միան-
գամ ի գործոց օրինացն են, ընդ ա-
նիծիւք են. քանզի գրեալ է թէ Անի-
ծեալ ամենայն մարդ որ ոչ կացցէ յա-
մենայն գրեալսն ի գիրս օրինաց՝ առ-
նել զամենայն։ ՎԶ
11 Զի օրինօքն ոչ ոք արդարանայ ա-
ռաջի Աստուծոյ, այն յայտ իսկ է. զի
Արդարն, [1]ասէ, ի հաւատոց կեցցէ։
12 Բայց օրէնքն չեն ի հաւատոց, այլ որ
13 արասցէ զայն՝ կեցցէ ի նոսին։ Քրիս-
տոս գնեաց զմեզ յանիծից օրինացն,
եղեալ վասն մեր անէծք, (զի գրեալ է
թէ Անիծեալ ամենայն որ կախեալ
14 կայցէ զփայտէ,) Զի ի հեթանոսս օրհ-
նութիւնն Աբրահամու եղիցի ի Քրիս-
տոս Յիսուս. զի մեք զաւետիս Հոգ-
ւոյն Սրբոյ ընկալցուք հաւատովք։
15 Ըստ մարդկութեան ասեմ, եղբարք.
Ապաքէն զմարդկան հաստատեալ կտակ
ոչ ոք կարէ անարգել, եւ ոչ այլ հրա-
16 ման ի վերայ այնր տալ, Իսկ Աբրա-
համու խոստացան աւետիքն եւ զա-
ւակի նորա. եւ ոչ ասէ, Զաւակաց՝
իբրեւ բազմաց, այլ իբրեւ զմիոյ, Թէ՝
Եւ զաւակի քում, որ է Քրիստոս։
17 Բայց զայս ասեմ, Զկտակն յառաջա-
գոյն հաստատեալ յԱստուծոյ ի Քրիս-
տոս, օրէնքն որ յետ չորեքհարիւր եւ
երեսուն ամի եղան, ոչ կարեն խափա-
18 նել առ ի խափանելոյ զաւետիսն։ Եթէ
յօրինաց անտի է ժառանգութիւնն,
ապա ոչ եւս յաւետեացն. բայց Աբրա-
համու աւետեօք շնորհեաց Աստուած։
19 Իսկ զի՞նչ իցեն օրէնք. յանցուածոց
վասն յաւելան, մինչեւ եկեսցէ զա-
ւակն, որում խոստացեալն էր՝ կար-
գեալ հրեշտակօք ի ձեռն միջնորդի։
20 Իսկ միջնորդ միոյ ուրուք ոչ է, բայց
21 Աստուած մի է։ Իսկ արդ օրէնքն հա-
կառա՞կ ինչ իցեն աւետեացն Աստու-
ծոյ. քաւ լիցի. զի եթէ տուեալ էին
օրէնքն որ կարող էին կենդանի առնել,
ապա հաստատ յօրինաց անտի էր ար-
22 դարութիւն։ Այլ փակեցին գիրք զա-
մենեսին ընդ մեղօք, զի աւետիքն ի
հաւատոց անտի Յիսուսի Քրիստոսի
23 տացին հաւատացելոց։ Մինչեւ հա-
ւատքն եկեալ էին՝ ընդ օրինօք փակեալ
պահէաք ի հանդերձեալ հաւատոն, որ
24 յայտնելոց էին ի մեզ։ Ապա օրէնքն
դաստիարակ եղեն մեզ ի Քրիստոս Յի-
սուս, զի ի հաւատոցն արդարասցուք։
25 Այլ իբրեւ եկին հաւատքն, ոչ եւս ընդ
26 դաստիարակաւ եմք։ Քանզի ամենե-
քին որդիք Աստուծոյ էք հաւատովք
27 ի Յիսուս Քրիստոս։ Որք միանգամ
ի Քրիստոս մկրտեցարուք, զՔրիստոս
28 զգեցեալ էք. չիք խտիր, Ոչ Հրէի եւ
ոչ հեթանոսի, ոչ ծառայի եւ ոչ ազա-
տի, ոչ արուի եւ ոչ իգի. զի ամե-
նեքեան դուք մի էք ի Քրիստոս Յի-
29 սուս։ Ապա եթէ դուք Քրիստոսի էք,
ուրեմն Աբրահամու զաւակ էք, ըստ
աւետեացն ժառանգք.

## ԳԼ. Դ

1 ԶԿ. Զայս ասեմ, ցորքան ժամանակս
ժառանգն տղայ է՝ չէ ինչ առաւել քան
զծառայն, թէպէտ եւ Տէր իցէ ամե-
2 նեցուն. Այլ ընդ հազարապետօք է եւ
ընդ գաւառապետօք մինչեւ ի ժամա-
3 նակակէտ հօրն։ Նոյնպէս եւ մեք մինչ
տղայքն էաք, ընդ տարերբք աշխար-
4 հիս ի ծառայութեան կայաք։ Այլ իբ-
րեւ եկն լրումն ժամանակին, առա-
քեաց Աստուած զՈրդին իւր որ եղեւ
5 ի կնոջէ, եւ եմուտ ընդ օրինօք. Զի
զնոսա որ ընդ օրինօքն իցեն՝ գնեսցէ,
զի մեք զորդեգրութիւն ընկալցուք։
6 Եւ զի էք դուք որդիք, առաքեաց Աս-
տուած զՀոգի Որդւոյն իւրոյ ի սիրտս
7 [2]մեր՝ որ աղաղակէ Աբբա, Հայր։ Ա-
պաւասիկ չես ծառայ, այլ որդի. եթէ
որդի, եւ ժառանգ [3]Աստուծոյ։
8 Այլ յայնժամ մինչ ոչն գիտէիք զԱս-
տուած՝ ծառայէիք այնոցիկ որ ոչն էին
9 ի բնէ Աստուածք։ Այլ այժմիկ ծանի-
րուք զԱստուած, մանաւանդ թէ ծա-
նուցայք իսկ յԱստուծոյ, զիա՞րդ դառ-
նայք միւսանգամ ի տարերս տկարս եւ
յաղքատս, որոց միւսանգամ զանձինս
10 ծառայեցուցանել կամիք։ Զաւուրս
խտրէք եւ զամիսս եւ զժամանակս
11 եւ զտարիս։ Երկնչիմ ի ձէնջ, գուցէ
թէ ի զուր ինչ վաստակեցի ի ձեզ։
12 Եղերուք իբրեւ զիս, քանզի եւ ես

[1]ի Յոհանն պակասէ

[2]Ոմանք, ձեր [3]Ոմանք, Աստուծոյ ի Քրիստոս

իբրեւ զձեզդ էի · եղբարք, աղաչեմ
զձեզ, չիք ինչ ձեր մեղուցեալ առ իս։
13 Գիտէք դուք զի տկարութեամբ մարմ-
նոյ աւետարանեցի ձեզ զառաջինն ·
եւ զփորձանսն որ ի մարմնի իմում
14 էին՝ Ոչ անարգեցէք եւ ոչ անգոսնե-
ցէք, այլ իբրեւ զհրեշտակ Աստուծոյ
ընկալարուք զիս, իբրեւ զՔրիստոս
15 Յիսուս։ Իսկ արդ ո՞ւր է երանու-
թիւնն ձեր · վկայեմ ձեզ, եթէ հնար
ինչ էր, զաչս ձեր հանէիք եւ տայիք
16 ինձ։ Արդ զի՞ թշնամի իմն եղէ ձեզ,
17 զի զստոյգն խօսեցայ։ Այլ նախանձե-
ցուցանեն զձեզ ոչ ի բարի, եւ ար-
գելուլ կամին զձեզ զի նոցա նախան-
18 ձաւորք լինիցիք։ Բայց լաւ է նա-
խանձաւոր լինել ի բարիս յամենայն
ժամ, եւ ոչ միայն յորժամ ի ձերում
միջի իցեմ։
19 ՁԴ· Որդեակք իմ, զորս դարձեալ
վերստին երկնեմ, մինչեւ նկարեսցի
20 Քրիստոս ի ձեզ, Կամէի այժմ գալ առ
ձեզ եւ փոխել զբարբառ իմ, զի տա-
րակուսեալ եմ ես վասն ձեր։
21 Ասէք ինձ՝ որ ընդ օրինօքն կա-
միք լինել, չիցէ՞ [1]ընթերցեալ ձեր զօ-
22 րէնս։ Զի գրեալ է թէ Աբրահամու
երկու որդիք էին, մի՝ յաղախնոյ ան-
23 տի, եւ մի՝ յազատէն։ Այլ որ յաղախ-
նոյն էր՝ ըստ մարմնոյ ծնեալ էր, եւ
24 որ յազատէն՝ ըստ աւետեացն · Որ է
առակ օրինակի · զի այս ինքն են եր-
կու կտակարանք, մի՝ ի լեռնէ Սինեայ
ի ծառայութիւն ծնեալ, որ է Հագար ·
25 Քանզի Հագարն լեառն Սինա է յԱրա-
բիա, հաւասար է [2]այժմ Երուսաղեմի,
զի ծառայէ որդւովք իւրովք հանդերձ։
26 Այլ վերինն Երուսաղէմ ազատ է, որ
27 է մայր մեր [3]ամենեցուն։ Զի գրեալ է,
Ուրախ լեր, ամուլ, որ ոչ ծնանէիր ·
գոչեա եւ աղաղակեա որ ոչդ երկնէիր ·
զի բազում են որդիք սկնդկիդ առա-
28 ւել քան զարամբւոյն։ Այլ մեք, եղ-
բարք, ըստ Իսահակայ աւետեացն որ-
29 դիք եմք։ Այլ որպէս յայնժամ, որ
ըստ մարմնոյն ծնեալ էր՝ հալածէր զայն
որ ըստ հոգւոյն, նոյնպէս եւ այժմ։
30 Այլ զի՞նչ ասէ գիր, Ի բաց հան զա-
ղախինդ եւ զորդի դորա, զի մի՛ ժա-
ռանգեսցէ որդի աղախնոյդ ընդ որդւոյ
31 ազատին։ Վասն որոյ, եղբարք, չեմք
որդիք աղախնոյն, այլ ազատին, [4]ա-
զատութեամբն, որով Քրիստոս զմեզ
ազատեցոյց։

## ԳԼ· Ե

1 Պինդ կացէք այսուհետեւ, եւ մի՛
միւսանգամ ընդ լծով ծառայութեան
մտանէք։
2 ՁՁ· Ահաւասիկ ես Պաւղոս ասեմ
ձեզ, զի եթէ թլփատիք, Քրիստոս ինչ
3 ձեզ ոչ օգնէ։ Վկայեմ ամենայն մար-
դոյ որ թլփատիցի, թէ պարտական է
4 զամենայն օրէնսն կատարել։ Խափա-
նեալ էք ի Քրիստոսէ որ օրինօքն ար-
դարանայք, եւ անկեալ էք ի շնորհաց
5 անտի։ Զի մեք Հոգւովն ի հաւատոց
յուսոյն արդարութեան ակն ունիմք։
6 Զի ի Քրիստոս Յիսուս ոչ թլփատու-
թիւն ինչ կարող է, եւ ոչ անթլփա-
տութիւն, այլ՝ հաւատք սիրով աջող-
7 եալք։ Բարւոք ընթանայիք · ո՞ կա-
սեցոյց զձեզ ճշմարտութեանն չհաւա-
8 նել։ Զի այն հրապոյրք ոչ յայնմանէ
9 են որ կոչեացն զձեզ։ Փոքր մի խմոր
10 զամենայն զանգուածն խմորէ։ Այլ ես
յուսացեալ եմ ի ձեզ Տերամբ, թէ ոչ
այլազգ ինչ խորհիցիք, եւ որ խռովե-
ցուցանէ զձեզ՝ կրեսցէ զդատաստան,
11 ո ոք եւ իցէ։ Այլ ես, եղբարք, եթէ
թլփատութիւն քարոզէի, ընդէ՞ր տա-
կաւին հալածիմ · ապա ուրեմն խա-
փանեալ իցէ գայթակղութիւն խաչին։
12 Երանի թէ մոտակտուր իսկ լինէին
որ զձեզն խռովեցուցանեն։
13 Զի դուք յազատութիւն կոչեցեալ
էք, եղբարք · միայն զի ազատութիւն
ձեր ոչ լինիցի ի պատճառս մարմնոյ,
14 այլ սիրով ծառայեցէք միմեանց։ Զի
ամենայն օրէնք ի մի բան կատարին,
ի Սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն
15 քո։ Ապա եթէ զմիմեանս խածատիցէք
եւ ուտիցէք, զգոյշ լերուք, գուցէ ի
միմեանց սատակիցիք։
16 ԷԴ· Բայց զայս ասեմ · Հոգւով գնա-
ցէք, եւ զցանկութիւն մարմնոյ մի՛
17 կատարէք։ Զի մարմին ցանկայ հա-
կառակ հոգւոյ, եւ հոգի՝ հակառակ

[1] Յոյն, լռեալ
[2] Յոյն, այժմու
[3] Յոմանս պակասէ
[4] Ի բազումս աստէն սկսանի յաջորդ գլուխն

մարմնոյ. եւ զի սոքա միմեանց հա-
կառակ են, մի՛ զոր կամիցիքն՝ զայն
18 առնիցէք: Իսկ եթէ Հոգւով վարիք,
19 ապա չէք ընդ օրինօք: Զի յայտնի են
գործք մարմնոյ, այսինքն են շնու-
թիւն, պոռնկութիւն, պղծութիւն,
20 գիջութիւն, կռապաշտութիւն, կա-
խարդութիւն, թշնամութիւն, հեռ,
նախանձ, բարկութիւն, հակառակու-
թիւնք, երկպառակութիւնք, հեր-
21 ձուածք, Չարակնութիւն, սպանու-
թիւնք, արբեցութիւնք, անառակու-
թիւնք, եւ որ ինչ սոցին նման են.
զոր յառաջագոյն իսկ ասեմ ձեզ, որպէս
եւ կանխաւն ասէի, թէ որ զայսպիսի
ինչ գործեն՝ զարքայութիւն Աստուծոյ
22 ոչ ժառանգեն: Իսկ պտուղ Հոգւոյն
այս է. սէր, խնդութիւն, խաղաղու-
23 թիւն, երկայնմտութիւն, Քաղցրու-
թիւն, բարութիւն, հաւատք, հեզու-
թիւն, ժուժկալութիւն. զայսպիսեաց
24 աստի օրէնքն չեն հակառակ: Իսկ որ
Քրիստոսեանքն են՝ զմարմինս իւրեանց
ի խաչ հանին կարեօքն եւ ցանկու-
25 թեամբք հանդերձ: Եթէ կեամք Հոգ-
ւով, ընդ Հոգւոյն եւ միաբանեսցուք:
26 Եւ մի՛ լիցուք սնապարծք՝ միմեանց
ձայն տալով եւ ընդ միմեանս նախան-
ձելով:

## ԳԼ. Զ

1 ԷԶ. Եղբարք, եթէ յանկարծ ըմբռնեսցի
ոք [1]ի ձէնջ յինչ եւ իցէ յանցանս,
դուք որ հոգեւորքդ էք՝ հաստատեցէք
զայնպիսին հոգւով հեզութեան. զգոյշ
լինիցիք անձանց զի մի՛ եւ դուք փոր-
2 ձիցիք: Զմիմեանց բեռն բարձէք, եւ
այնպէս կատարեցէք զօրէնսն Քրիս-
3 տոսի: Եթէ համարիցի ոք լինել ինչ,
4 եւ չիցէ, զանձն իւր խաբէ: Զգործ
՛իւր կշռեսցէ իւրաքանչիւր ոք, եւ ա-
պա անձին իւրում միայն պարծանս
5 տացէ, եւ մի՛ առ ընկերաւն: Զի իւ-
րաքանչիւր ոք զիւր բեռն բառնալոց է:
6 Հաղորդութիւն արասցէ [2]աշակերտն
վարդապետին յամենայն բարութիւնս:
7 Մի՛ խաբիք, Աստուած ոչ արհամարհի:
8 Զի զոր ինչ սերմանէ մարդ՝ զնոյն եւ
հնձեսցէ. որ սերմանէ ի մարմին իւր՝
ի մարմնոյ անտի հնձեսցէ զապակա-
նութիւն. եւ որ սերմանէ ի Հոգին՝
ի Հոգւոյ անտի հնձեսցէ զկեանսն յա-
9 ւիտենից: Այլ զբարիս գործել մի՛
ձանձրասցուք, զի ի ժամանակի իւ-
րում հնձեսցուք [3]առանց լքանելոյ":
10 Այսուհետեւ մինչդեռ ժամանակս ի
ձեռս է, գործեսցուք զբարիս առ ա-
մենեսեան, մանաւանդ առ ընտանիսն
հաւատոյ:
11 Տեսէք որպիսի գրով գրեցի առ ձեզ
12 իմով ձեռամբ: Զի որ միանգամ կա-
մին բարեմարդիկ լինել մարմնով, նո-
քա ստիպեն զձեզ թլփատել. միայն
զի մի՛ [4]զխաչին Քրիստոսի զհետ եր-
13 թայցեն": Քանզի եւ որ թլփատեալքն
իսկ են՝ նոքա զօրէնսն ոչ պահեն, այլ
կամին զի դուք թլփատեսջիք, զի ձե-
րով մարմնովդ պարծեսցին: ՎԶ
14 Այլ ինձ քաւ լիցի պարծել, բայց
միայն ի խաչն Տեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի, որով ինձ աշխարհ ի խաչ
15 ելեալ է, եւ ես՝ աշխարհի: [5]Զի ոչ"
թլփատութիւն ինչ է եւ ոչ անթլփա-
16 տութիւն, այլ նոր արարած: Եւ որ
միանգամ այսմ կանոնի միաբան լինին,
խաղաղութիւն ի վերայ նոցա եւ ողոր-
մութիւն, եւ ի վերայ Իսրայելին Աս-
17 տուծոյ: Այսուհետեւ աշխատ ոք զիս
մի՛ արասցէ, զի ես [6]զչարչարանսն
Քրիստոսի ի մարմնի իմում կրեմ:
18 Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
տոսի ընդ ոգւոյդ ձերում, եղբարք:
Ամէն:

Առ Գաղատացիս գրեցաւ ի Հռովմէ:

[1]Ի ճաշոցն պակասէ

[2]Յոյնն, որ ուսանին զբանն
[3]Յոյնն, եթէ ոչ լքանիցիմք
[4]Յոյնն, վասն խաչին Քրիստոսի հալածեսցին
[5]Ոմանք, Զի ի Քրիստոս Յիսուս ոչ
[6]Կամ, զերաշխէպսն



# ԱՌ ԵՓԵՍԱՑԻՍ

## ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 ըկ. ՊԱՒՂՈՍ, առաքեալ Յիսուսի
Քրիստոսի կամօքն Աստուծոյ, սրբոց
որ են [1]յԵփեսոս, եւ հաւատացելոց
2 [2]ի Քրիստոս. Շնորհք ընդ ձեզ եւ խա-
ղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ
եւ ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ։
3 Օրհնեալ է Աստուած եւ Հայր Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ օրհնեաց
զմեզ ամենայն հոգեւոր օրհնութեամբ
4 յերկնաւորս ի Քրիստոս. Որպէս ընտ-
րեաց զմեզ նովաւ յառաջ քան զլինելն
աշխարհի, լինել մեզ սուրբս եւ անա-
5 րատս առաջի նորա սիրով։ Յառաջա-
գոյն սահմանեաց զմեզ յորդեգրու-
թիւն ի ձեռն Յիսուսի Քրիստոսի ի
նոյն՝ ըստ հաճութեան կամաց իւրոց,
6 ի գովեստ փառաց շնորհաց իւրոց, ո-
րով զուարճացոյց զմեզ Սիրելեաւն.
7 Որով ունիմք զփրկութիւն ի ձեռն ար-
եան նորա, զթողութիւն մեղաց ըստ
8 մեծութեան շնորհաց իւրոց. Որ ա-
ռաւելաւ ի մեզ ամենայն իմաստու-
9 թեամբ եւ գիտութեամբ։ Եցոյց մեզ
զխորհուրդս կամաց իւրոց ըստ հա-
ճութեան իւրում, զոր յառաջագոյն
10 եդ [3]նովաւ, Ի տնտեսութիւն լրման
ժամանակաց, բովանդակել զամենայն
Քրիստոսիւ, որ ինչ յերկինս եւ որ
11 ինչ յերկրի ի նոյն, Որով եւ վիճակե-
ցաք յառաջագոյն հրաւիրեալք՝ ըստ
յառաջադրութեանն [4]Աստուծոյ, որ
զամենայն յաջողէ ըստ խորհրդոց կա-
12 մաց իւրոց. Լինել մեզ ի գովեստ փա-
ռաց նորա՝ յառաջագոյն յուսացելոցս
13 ի Քրիստոս. Որով եւ դուք իբրեւ
լուարուք զբանն ճշմարտութեան, զա-
ւետարանն փրկութեան ձերոյ, որով
եւ հաւատացեալ կնքեցայք Հոգւոյն
14 Սրբոյ աւետեաց. Որ է առհաւատչեայ
ժառանգութեան մերոյ, ի փրկութիւն
[5]նուաճութեան, ի գովեստ փառաց
նորա։
15 ըդ. Վասն այնորիկ եւ ես իբրեւ
լուայ զհաւատսն ձեր որ ի Տէր Յիսուս,
եւ զսէրն որ ընդ ամենայն սուրբս,
16 Ոչ դադարեմ ի գոհանալոյ վասն ձեր՝
17 յիշել զձեզ յաղօթս. Զի Աստուած
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի,
Հայրն փառաց, տացէ ձեզ զհոգին ի-
մաստութեան եւ յայտնութեան գի-
18 տութեամբն իւրով. Լուսաւոր առնել
զաչս [6]սրտից՝ առ ի գիտելոյ [7]մեզ զի՛նչ
է յոյս կոչման նորա, եւ զի՛նչ է մե-
ծութիւն փառաց ժառանգութեան նո-
19 րա ի սուրբս, Եւ զի՛նչ է առաւելու-
թիւն մեծութեան զօրութեան նորա
ի մեզ հաւատացեալս՝ ըստ յաջողու-
թեան կարողութեան զօրութեանն իւ-
20 րոյ, Զոր յաջողեաց ի Քրիստոս, զի
յարոյց զնա ի մեռելոց, եւ նստոյց ընդ
21 աջմէ իւրմէ յերկնաւորս Ի վերայ ա-
մենայն իշխանութեան եւ պետութեան
եւ զօրութեան եւ տէրութեան եւ ա-
մենայն անուան անուանելոյ, ոչ միայն
յաշխարհիս յայսմիկ, այլ եւ՝ ի հան-
22 դերձելումն. Եւ զամենայն ինչ հնա-
զանդ արար ի ներքոյ ոտից նորա, եւ
զնա եդ գլուխ ի վերայ ամենայն իրիք
23 եկեղեցւոյ, Որ է մարմին նորա,
լրումն՝ որ զամենայն յամենայնի լնու։

[1] Յոմանս ոչ կայ
[2] Յոյնն, ի Քրիստոս Յիսուս
[3] Ոմանք, յինքեան
[4] Բազումք, նորա
[5] Յոյնն, սեպհականութեան, կամ՝ ստացուածոյ
[6] Բազումք, սրտից ձերոց
[7] Յոյնն, ձեզ

## ԳԼ. Բ

1 Եւ դուք որ մեռեալն էիք ի մեղս ձեր
2 եւ յանցանս, Յորս երբեմն գնայիք
ըստ [1]յաւիտենի աշխարհիս այսորիկ,
ըստ իշխանին իշխանութեան օդոյս,
այսոյ՝ որ այժմս ընդմտեալ է յորդիսն
3 ապստամբութեան. Յորս եւ մեք ա-
մենեքեան շրջէաք երբեմն ի ցանկու-
թիւնս մարմնոյ մերոյ, եւ առնէաք
զկամս մարմնոյ եւ զմտաց, եւ էաք
[2]արդարեւ որդիք բարկութեան իբրեւ
այլքն։
4 ԸՁ. Այլ Աստուած որ մեծն է ողոր-
մութեամբ, վասն բազում սիրոյն իւ-
5 րոյ զոր սիրեացն զմեզ, Մինչդեռ մեռ-
եալն էաք ի մեղս մեր, կենդանիս ա-
րար զմեզ ի Քրիստոս. ([3]քանզի շնորհօք
6 ապրեցաք՟.) Ընդ նմին յարոյց, եւ ընդ
նմին նստոյց յերկնաւորս ի Քրիստոս
7 Յիսուս։ Զի ցուցցէ ի յաւիտեանսն
որ գալոցն են՝ զառաւել մեծութիւն
շնորհայն իւրոյ քաղցրութեամբ ի մեզ
8 ի Քրիստոս Յիսուս։ Զի շնորհօք [4]նո-
րա էք փրկեալք ի ձեռն հաւատոյն.
եւ այս ոչ ի ձէնջ, այլ Աստուծոյ պար-
9 գեւ է. Ոչ ի գործոց, զի մի՛ ոք պար-
10 ծեսցի։ Զի նորա արարած եմք՝ հաս-
տատեալք Քրիստոսիւ Յիսուսիւ ի
գործս բարութեան, յորս յառաջագոյն
պատրաստեաց Աստուած, զի ի նոյնս
գնասցուք։
11 Վասն որոյ եւ դուք յիշեցէք զի եր-
բեմն հեթանոսք էիք մարմնով, (որ
կոչեցեալն էն անթլփատութիւն յան-
ուանեալ թլփատութենէ անտի մարմ-
12 նաւոր ձեռագործին,) Զի էիք ի ժա-
մանակին յայնմիկ առանց Քրիստոսի,
եւ օտարացեալք յառաքինութենէն Իս-
րայելի, եւ տարագիրք յուխտից ա-
ւետեացն, եւ յոյս ինչ ոչ ունէիք եւ
13 անաստուածք էիք յաշխարհի։ Իսկ
այժմիկ ի ձեռն Յիսուսի Քրիստոսի
դուք որ երբեմն հեռաւորքն էիք՝ մեր-
ձաւորք եղերուք արեամբն Քրիստոսի։
14 Զի նա է խաղաղութիւն մեր որ արար
զերկոսեան մի, եւ զմիջնորմն ցանկոյն
քակեաց, զթշնամութիւն ի մարմնի
15 իւրում. Եւ զօրէնս պատուիրանացն
հրամանօքն՝ խափանեաց. զի զերկո-
սին հաստատեսցէ ինքեամբ ի մի նոր
16 մարդ, եւ արասցէ խաղաղութիւն. Եւ
հաշտեցուսցէ զերկոսին միով մարմնով
ընդ Աստուծոյ խաչիւն իւրով. քանզի
սպան զթշնամութիւն յանձին իւ-
17 րում։ Եւ եկն աւետարանեաց խաղա-
ղութիւն ձեզ հեռաւորաց, եւ խաղա-
18 ղութիւն՝ մերձաւորաց. Զի նովաւ
ունիմք զնուաճութիւն երկոքին միով
19 Հոգւով առ Հայր. Արդ այսուհետեւ
ոչ էք օտարք եւ պանդուխտք, այլ քա-
ղաքակիցք սրբոց եւ ընտանիք Ա-
20 ստուծոյ, Շինեալք ի վերայ հիման ա-
ռաքելոց եւ մարգարէից, որոյ է գլուխ
21 անկեանն Քրիստոս Յիսուս. Յորում
ամենայն շինուածն յօդեալ եւ պատ-
շաճեալ՝ աճէ ի տաճար սուրբ Տերամբ,
22 Յորում եւ դուք ընդ նմին շինիք ի
բնակութիւն Աստուծոյ Հոգւով։

ՎՁ

## ԳԼ. Գ

1 Վասն այսորիկ ես Պաւղոս, կապեալ
Յիսուսի Քրիստոսի վասն ձեր հե-
2 թանոսաց. Թերեւս լուեալ իցէ ձեր
զտնտեսութիւն շնորհացն Աստուծոյ,
3 որ տուեալ են ինձ ի ձեզ, Զի ըստ
յայտնութեան ցուցաւ ինձ խորհուրդն,
որպէս յառաջագոյն գրեցի առ ձեզ սա-
4 կաւուք. Առ ի կարող լինելոյ ընթեռ-
նուլ եւ ի միտ առնուլ զիմաստութիւնն
5 զիմ ի խորհրդեանն Քրիստոսի. Զի
այլոց ազգաց ոչ ցուցաւ որդւոց մարդ-
կան, որպէս այժմ յայտնեցաւ սրբոց
իւրոց առաքելոց եւ մարգարէից Հոգ-
6 ւով. Լինել հեթանոսաց ժառանգա-
կիցս եւ մարմնակիցս, եւ հաղորդս
աւետեացն ի Քրիստոս [5]Յիսուս աւե-
7 տարանաւն, Որոյ եղէ ես սպասաւոր
ըստ պարգեւաց շնորհացն Աստուծոյ
որ տուան ինձ ըստ յաջողութեան զօ-
8 րութեան նորա, (Ինձ՝ որ տրուպս եմ
ամենայն սրբոց, տուան շնորհքս այս,)
ի հեթանոսս աւետարանել զանքնին
9 մեծութիւնն Քրիստոսի, Եւ լուսաւոր
առնել զամենեսին, թէ զինչ է տնտե-
սութիւն խորհրդոյն որ ծածկեալ էր
յամենայն յաւիտեանց առ Աստուծոյ
10 որ զամենայն ինչ արար[6]. Զի յայտ-

[1]Այլբն., գնացից
[2]Յոյնն, ի բնէ
[3]Յոյնն, շնորհօք ապրեցարուք
[4]Ի բաղումս պակասէ
[5]Յոմանս պակասէ
[6]Ոմանք յաւելուն, ի ձեռն Յիսուսի Քրիստոսի

նեացի արդ իշխանութեանց եւ պետու-
թեանց որ յերկինս են՝ ի ձեռն եկե-
ղեցւոյ բազմապատիկ իմաստութիւնն
11 Աստուծոյ ։ Ըստ յառաջագրութեան
յաւիտեանցն զոր արար ի ձեռն Տեառն
12 մերոյ Յիսուսի Քրիստոսի ․ Որով ու-
նիմք զհամարձակութիւն եւ զնուա-
ճութիւն յուսով ի ձեռն հաւատոց
նորա ։
13 Վասն որոյ աղաչեմ, մի՛ ձանձրանալ
ի նեղութեանս [1]մերում որ վասն ձեր
14 է, որ է փառք [2]մեր ։ Վասն այսորիկ
զնեմ ծունր առ Հայր Տեառն մերոյ
15 Յիսուսի Քրիստոսի, Ուստի ամենայն
նահապետութիւն յերկինս եւ յերկրի
16 անուանի, Զի տացէ ձեզ ըստ մեծու-
թեան փառաց իւրոց, հաստատել զօ-
րութեամբ ի ձեռն Հոգւոյն իւրոյ ի
17 ներքին մարդն ․ Բնակել Քրիստոսի
հաւատովք ի սիրտս ձեր, սիրով ար-
18 մատացեալք եւ հաստատեալք ։ Զի
կարող լինիջիք հասանել ընդ ամենայն
սուրբս, զինչ է լայնութիւն եւ եր-
կայնութիւն եւ բարձրութիւն եւ խո-
19 րութիւն ․ Ծանաչել զառաւելութիւն
գիտութեան սիրոյն Քրիստոսի, զի
լցջիք ամենայն լրութեամբն Աստու-
20 ծոյ ։ Այլ այնմ որ կարողն է առաւել
քան զամենայն ինչ առնել յաճախու-
թեամբ քան զոր խնդրեմքն եւ իմա-
նամք, ըստ զօրութեանն որ յաջող-
21 եալն է ի մեզ, Նմա փառք յեկեղեցւոջն
[3]եւ ի Քրիստոս Յիսուս յամենայն ազգս
յաւիտենից յաւիտեանս ։ Ամէն ։

## ԳԼ․ Դ

1 Արդ աղաչեմ զձեզ ես որ կապեալս
եմ ի Տէր, արժանի գնալ կոչմանն
2 յոր կոչեցարուք, Ամենայն խոնարհու-
թեամբ եւ հեզութեամբ եւ երկայն-
մտութեամբ անսալ միմեանց սիրով ․
3 Փութալ պահել զմիաբանութիւն Հոգ-
4 ւոյն յօդիւ խաղաղութեան ։ Մի մար-
մին եւ մի հոգի, որպէս եւ կոչեցա-
5 րուք ի մի յոյս կոչման ձերոյ ․ Մի է
Տէր, մի հաւատք, մի մկրտութիւն ․
6 Մի Աստուած եւ Հայր ամենեցուն,
որ ի վերայ ամենայնի եւ ընդ ամե-
7 նեսին եւ յամենեսին [4]ի մեզ ։ Այլ իւ-
րաքանչիւր ումեք ի մէնջ տուեալ են
շնորհք ըստ չափոյ պարգեւացն Քրիս-
8 տոսի ։ Վասն որոյ եւ ասէ, Ել ի բար-
ձունս, գերեաց զգերութիւն եւ ետ
9 պարգեւս մարդկան ։ Որ ելն զինչ է,
եթէ ոչ զի էջ նախ ի ստորին կողմն
10 երկրի ։ Որ էջն նոյն է եւ որ ելն ի
վերոյ քան զամենայն երկինս, զի լցցէ
11 զամենայն ։ Եւ նա ետ զոմանս առա-
քեալս, զոմանս մարգարէս, զոմանս ա-
ւետարանիչս, զոմանս հովիւս եւ վար-
12 դապետս ․ Ի հաստատութիւն սրբոց,
ի գործ պաշտաման, ի շինուած մարմ-
13 նոյն Քրիստոսի ․ Մինչեւ հասցուք ա-
մենեքեան ի մի միաբանութիւն հա-
ւատոց եւ գիտութեան Որդւոյն Աս-
տուծոյ, յայր կատարեալ ի չափ հա-
14 սակի կատարմանն Քրիստոսի ։ Զի մի՛
յայսմհետէ լիցուք տղայք խռովեալք եւ
տատանեալք յամենայն հողմոց վար-
դապետութեան խաբէութեամբ մարդ-
կան, խորամանկութեամբ ի խաբէու-
15 թիւն մոլորութեան ․ Այլ ճշմարտեալք
սիրով՝ աճեցուսցուք ի նա զամենայն,
16 որ է գլուխ, Քրիստոս ․ Ուստի ամե-
նայն մարմինն յօդեալ եւ պատշաճեալ
ամենայն խաղալեօք տարաբերութեան,
ըստ ազդեցութեան չափով ըստ իւ-
րաքանչիւր մասին զաճումն մարմնոյ
գործէ ի շինած անձին իւրոյ սիրով ։
17 Արդ զայս ասեմ եւ ուխտեմ ի Տէր,
մի՛ եւս ձեզ գնոյն օրինակ գնալ որ-
պէս եւ այլ հեթանոսք գնան ունայ-
18 նութեամբ մտաց իւրեանց ․ Որոց խա-
ւարեալ են սիրտք իւրեանց, եւ օտա-
րացեալ են ի կենաց անտի Աստուծոյ
վասն տգիտութեանն որ է ի նոսա,
վասն կուրութեան սրտից իւրեանց ։
19 Որք [5]զանձանց իւրեանց զյոյսն հա-
տին, եւ՝՝ մատնեցին զանձինս գիջու-
թեան, ի գործս ամենայն պղծութեան
20 ագահութեամբ ։ Այլ դուք ոչ այսպէս
21 ուսարուք զՔրիստոս, Թէպէտ եւ
լուարուք զնմանէ եւ նովաւ ուսայք,
որպէս է ճշմարտութիւնն Յիսուսի ․
22 Ի բաց մերկանալ ի ձէնջ ըստ առաջին
գնացիցն զմարդն հին, զապականեալն
23 ցանկութեամբք խաբէութեանն ․ Եւ

[1] Յոյնն, իմում
[2] Բազումք, ձեր
[3] Ի բազումս պակասէ
[4] Ի բազումս պակասէ․ յօրինաւ՝ ի ձեզ
[5] Յոյնն, անզգայեալք

24 նորոգել հոգւովն մտաց ձերոց, Եւ
զգենուլ զնոր մարդն որ ըստ Աստու-
ծոյն հաստատեալ է արդարութեամբ եւ
25 սրբութեամբ ճշմարտութեանն։ Վասն
որոյ ի բաց ընկեցէք զստութիւն, խօ-
սեցարուք զճշմարտութիւն իւրաքան-
չիւր ընդ ընկերի իւրում, զի եմք
26 միմեանց անդամք։ Բարկանայք, եւ մի՛
մեղանչէք. արեգակն ի վերայ բար-
27 կութեան ձերոյ մի՛ մտցէ։ Եւ մի՛ տայք
28 տեղի Սատանայի։ Որ գողանայրն՝ մի՛
եւս գողասցի, այլ մանաւանդ վաս-
տակեսցէ գործել ձեռօք իւրովք զբա-
րիս. զի բաւական իցէ տալ ում պի-
29 տոյ իցէ։ Ամենայն բան տղեղ ի բե-
րանոյ ձերմէ մի՛ ելցէ, այլ որ ինչ բա-
րին է ի շինած պիտոյից, զի տացէ
30 շնորհս այնոցիկ որ լսենն։ Եւ մի՛
տրտմեցուցանէք զՀոգին Սուրբ Աս-
տուծոյ, որով կնքեցարուք [1]յաւուրն
31 փրկութեան։ Ամենայն դառնութիւն
եւ բարկութիւն եւ սրտմտութիւն եւ
աղաղակ եւ հայհոյութիւն բարձցի ի
ձէնջ ամենայն չարութեամբն հանդերձ։
32 Լերուք ընդ միմեանս քաղցունք,
գթածք, շնորհել միմեանց, որպէս եւ
Աստուած Քրիստոսիւ շնորհեաց մեզ։

Գլ. Ե

1 Եղերուք նմանողք Աստուծոյ իբրեւ
2 որդիք սիրելիք. Եւ գնացէք սիրով,
որպէս եւ Քրիստոս սիրեաց զմեզ, եւ
մատնեաց զանձն իւր վասն մեր պա-
տարագ եւ զենումն Աստուծոյ ի հոտ
3 անուշից։ Այլ պոռնկութիւն եւ ամե-
նայն պղծութիւն կամ ագահութիւն
եւ անուանեսցի մի՛ ի միջի ձերում,
4 որպէս եւ վայելէ սրբոց, Եւ զաղրու-
թիւն կամ խօսք յիմարութեան կամ
խեղկատակութիւն որ ոչ վայելէ, այլ
5 մանաւանդ գոհութիւն։ Զայս տեղե-
կացեալ գիտասջիք թէ ամենայն պոռ-
նիկ կամ պիղծ կամ ագահ որ է կռա-
պաշտ՝ ոչ ունի ժառանգութիւն յար-
քայութեանն Քրիստոսի եւ Աստու-
6 ծոյ։ Մի՛ ոք զձեզ խաբեսցէ բանիւք
սնոտեօք, զի վասն այսորիկ իսկ գայ
բարկութիւն Աստուծոյ ի վերայ որդ-
7 ւոյն անհաւանութեան։ Մի՛ այսու-
8 հետեւ լինիք բաժանորդք նոցա։ Զի
թէպէտ եւ երբեմն էիք խաւար, արդ
լոյս էք ի Տէր. իբրեւ զորդիս լուսոյ
9 գնացէք. Զի պտուղ [2]լուսոյ ամենայն
բարութեամբ է եւ արդարութեամբ եւ
10 ճշմարտութեամբ։ Փորձեցէք զինչ է
11 հաճոյ Տեառն. Եւ մի՛ կցորդ լինիք
անպտղութեան գործոցն խաւարի, այլ
12 մանաւանդ յանդիմանեցէք։ Զի որ ի
ծածուկ ինչ գործի ի նոսա՝ զայն եւ
13 խօսել աղտեղի է։ Այլ ամենայն ինչ
յանդիմանեալ՝ ի լուսոյ յայտնի լինի.
զի ամենայն ինչ որ յայտնի է՝ լոյս է։
14 Վասն որոյ եւ ասէ, Արի որ ննջեսդ,
եւ կանգնեաց ի մեռելոց, եւ լուսա-
տու լիցի քեզ Քրիստոս։
15 Թկ. Տեսջիք ո՛րպէս ճշմարտիւ գնայ-
16 ցէք. մի՛ իբրեւ անիմաստք, Այլ իբ-
րեւ իմաստունք. գնեցէք զժամանակս,
17 զի աւուրքս չարութեան են։ Վասն
այնորիկ մի՛ լինիք անմիտք, այլ իմա-
18 ցարուք զինչ են կամք Տեառն։ Եւ մի՛
արբենայք գինւով յորում գեղխու-
թիւն է, այլ մանաւանդ լցարուք Հոգ-
19 ւով. Խօսել [3]ի սիրտս ձեր" սաղմոսիւք
եւ օրհնութեամբք եւ երգովք հոգե-
ւորօք, երգել եւ սաղմոս ասել ի սիրտս
20 ձեր Տեառն։ Գոհացարուք յամենայն
ժամ ի վերայ ամենայնի յանուն Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի [4]Հօրն եւ
Աստուծոյ"։
21 Հնազանդ լերուք միմեանց երկիւ-
22 ղիւն [5]Քրիստոսի։ Կանայք իւրեանց
արանց հնազանդ լիցին իբրեւ Տեառն.
23 Զի այր է գլուխ կնոջ, որպէս եւ
Քրիստոս գլուխ է եկեղեցւոյ, եւ ինքն
24 է Փրկիչ մարմնոյ։ Այլ որպէս եկե-
ղեցին հնազանդ լինի Քրիստոսի, նոյն-
պէս եւ կանայք՝ իւրեանց արանց յա-
25 մենայնի։ Արք, սիրեցէք զկանայս ձեր,
որպէս եւ Քրիստոս սիրեաց զեկեղե-
ցի, եւ զանձն իւր մատնեաց վասն
26 նորա. Զի զնա սրբեսցէ սրբութեամբ
27 [6]աւազանին՝ բանիւ. Զի կացուսցէ
ինքն իւր յանդիման փառաւոր զեկե-
ղեցի, զի մի՛ ունիցի ինչ արատ կամ
[7]աղտեղութիւն կամ այլ ինչ յայսպի-
սեաց, այլ զի իցէ սուրբ եւ անարատ։
28 Նոյնպէս պարտին արք սիրել զիւրեանց

[1] Յոյնն, յօրն

[2] Ոմանք, Հոգւոյն
[3] կամ, ընդ միմեանս
[4] Յոյնն, զԱստուծոյ և զՀօրն
[5] Ոմանք, Աստուծոյ
[6] Յոյնն, աւազանին ջրոյ
[7] կամ, խորշ

*կանայս իբրեւ զիւրեանց մարմինս.*
*որ սիրէ զկին իւր՝ զանձն իւր սիրէ.*
29 *Զի ոչ ոք երբեք ատեաց զանձն իւր,*
*այլ սնուցանէ եւ դարմանէ զնա, որ-*
30 *պէս եւ [1]Քրիստոս զեկեղեցի. Զի ան-*
*դամք եմք մարմնոյ նորա, ի մարմնոյ*
31 *նորա եւ յոսկերաց նորա ։ Վասն այսո-*
*րիկ թողցէ այր զհայր եւ զմայր իւր,*
*եւ երթիցէ զհետ կնոջ իւրոյ, եւ եղիցին*
32 *երկոքին ի մարմին մի ։ Խորհուրդս այս*
*մեծ է, բայց ես ասեմ ի Քրիստոս եւ*
33 *յեկեղեցի ։ Այլ եւ դուք [2]նոյնպէս մի*
*ըստ միոջէ, զի՞ իւրաքանչիւր ոք զիւր*
*կին այնպէս սիրեսցէ իբրեւ զիւր անձն,*
*եւ կին երկնչիցի յառնէ իւրմէ ։*

## Գլ. Զ

1 ԹԴ. **Ո***րդիք, հնազանդ լերուք ծնո-*
*ղաց ձերոց ի Տէր, զի այն է արժանն ։*
2 *Պատուեա զհայր քո եւ զմայր, որ է*
3 *առաջին պատուիրան յաւետիւն, Զի*
*քեզ բարի եղիցի, եւ երկայնակեաց*
4 *լինիցիս ի վերայ երկրի ։ Հարք, մի՛*
*զայրացուցանէք զորդիս ձեր, այլ սնու-*
*ցանիջիք զնոսա խրատու եւ ուսմամբ*
5 *Տեառն ։ Ծառայք, հնազանդ լերուք*
*տերանց ձերոց մարմնաւորաց ահիւ*
*եւ դողութեամբ եւ միամտութեամբ*
*սրտից ձերոց՝ որպէս եւ Քրիստոսի ։*
6 *Մի՛ առ ականէ ծառայել իբրեւ մար-*
*դահաճոյք, այլ իբրեւ ծառայք Քրիս-*
7 *տոսի առնել զկամս Աստուծոյ. Սրտի*
*մտօք ծառայել իբրեւ Տեառն, եւ մի՛*
8 *իբրեւ մարդկան ։ Գիտասջիք թէ իւ-*
*րաքանչիւր ոք որ զինչ առնէ զբարին,*
*զնոյն ընդունի եւ ի Տեառնէ, եթէ՛*
9 *ծառայ, եւ եթէ՛ ազատ ։ Եւ դուք,*
*տեարք, զնոյն առնիջիք առ նոսա,*
*ներելով առնել զպատուհասն, գիտաս-*
*ջիք թէ եւ նոցա եւ ձեր Տէր գոյ յեր-*
*կինս. եւ ակնառութիւն ոչ գոյ առա-*
*ջի նորա ։*
10 *[3]Այսուհետեւ զօրացարուք Տերամբ*
*եւ կարողութեամբ զօրութեան նո-*
11 *րա ։ Եւ զգեցարուք զսպառազինու-*
*թիւնն Աստուծոյ, զի կարող լինիջիք*
12 *կալ ընդդէմ հնարից Սատանայի ։ Զի*
*ոչ է մեզ պատերազմ ընդ մարմնոյ եւ*
*ընդ արեան, այլ ընդ իշխանութիւնս*
*եւ ընդ պետութիւնս եւ ընդ աշխար-*
*հակալս խաւարիս այսորիկ, ընդ այս*
*չարութեան որ ի ներքոյ երկնից ։*
13 ԹԶ. *Վասն այսորիկ առէք զսպառա-*
*զինութիւնն Աստուծոյ, զի կարող լի-*
*նիջիք ի զիմի հարկանել [4]չարին յա-*
14 *ւուրն չարութեան ։ Եւ իբրեւ զամե-*
*նայն ինչ կատարիցէք, հաստատուն*
*կացէք, զտեղի կալջիք, սնդեալ զմէջս*
*ձեր ճշմարտութեամբ, եւ զգեցեալ*
15 *զզրահսն արդարութեան, Եւ ագու-*
*ցեալ զոտս պատրաստութեամբ աւե-*
16 *տարանին խաղաղութեան ։ Եւ ի վե-*
*րայ ամենայնի առէք զվահանն հաւա-*
*տոց, որով կարող լինիջիք զամենայն*
17 *նետս մոխս չարին շիջուցանել ։ Եւ*
*առէք զսաղաւարտն փրկութեան եւ*
*զսուսեր Հոգւոյն, որ է բանն Աստու-*
18 *ծոյ. Ամենայն աղօթիւք եւ խնդրուա-*
*ծովք աղօթս առնել յամենայն ժամա-*
*նակի Հոգւով, եւ ի նոյն տքնեսջիք ա-*
*մենայն ժուժկալութեամբ եւ խընդ-*
19 *րուածովք վասն ամենայն սրբոց, Եւ*
*վասն իմ, զի ինձ տացի բան ի բանալ*
*բերանոյ իմոյ համարձակութեամբ ցու-*
20 *ցանել զխորհուրդ աւետարանին. Վասն*
*որոյ պատգամաւորիմ կապանօքս, զի*
*նովին համարձակեցայց որպէս եւ*
*պարտ իցէ ինձ խօսել ։*
21 *Բայց զի գիտիցէք եւ դուք զինէն*
*զինչ գործիցեմ, զամենայն ինչ ցուցցէ*
*ձեզ Տիւքիկոս սիրելի եղբայր եւ հա-*
22 *ւատարիմ պաշտօնեայ ի Տէր. Զոր ա-*
*ռաքեցի առ ձեզ գմին իրի, զի գիտաս-*
*ջիք դուք զմէնջ, եւ մխիթարեսցէ*
23 *զսիրտս ձեր ։ Խաղաղութիւն ընդ եղ-*
*բարս, եւ սէր հաւատովքն հանդերձ*
*յԱստուծոյ ի Հօրէ եւ ի Տեառնէ Յի-*
24 *սուսէ Քրիստոսէ ։ Շնորհք ընդ ամե-*
*նեսին ոյք սիրեն զՏէր մեր Յիսուս*
*Քրիստոս անեղծութեամբ ։*[5]

Առ Եփեսացիս գրեցաւ ի Հռովմէ ի ձեռն
Տիւքիկոսի ։

---

[1] Ոմանք, Տէր
[2] Ի Յունին պակասէ
[3] Ոմանք, Այսուհետեւ, եղբարք իմ,
[4] Ի Յունին պակասէ
[5] Ոմանք ի Յոյն եւ ի Հայ ձեռագրաց յաւելուն, Ամէն ։

# ԱՌ ՓԻԼԻՊԵՑԻՍ

## ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 ԺԿ. ՊԱՒՂՈՍ եւ Տիմոթէոս, ծառայք
Յիսուսի Քրիստոսի, ամենայն սրբոց
ի Քրիստոս Յիսուս, որ են ի կողմանս
Փիլիպեցւոց, եպիսկոպոսակցօք եւ
2 սարկաւագօք. Շնորհք ընդ ձեզ եւ
խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ
եւ ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ։
3 Գոհանամ զԱստուծոյ իմոյ ի վերայ
4 ամենայն յիշատակաց ձերոց, Յամե-
նայն ժամ յամենայն խնդրուածս իմ
վասն ձեր ամենեցուն առնել աղօթս
5 խնդութեամբ, Վասն հաղորդութեան
ձերոյ ընդ աւետարանին յօրէ յառաջ-
6 նըմէ մինչեւ ցայժմ. Վստահ եմ յայդ
թէ որ սկսաւն ի ձեզ զգործս բար-
եաց՝ կատարեսցէ մինչեւ յօրն Յիսուսի
7 Քրիստոսի. Որպէս իրաւ իսկ թուի
ինձ խորհել զայս վասն ձեր ամենե-
ցուն, վասն ունելոյ [1]ինձ զձեզ՝ ի սրտի
ի կապանս իմում, եւ ի պատասխա-
նատուութեան իմում եւ ի հաստա-
տութեան աւետարանին, կցորդս ինձ
8 շնորհաց զձեզ ամենեսին լինել։ [2]Վկայ
է ինձ Աստուած, որպէս անձկացեալ
եմ առ ձեզ ամենեսին գթովքն Քրիս-
9 տոսի Յիսուսի։ Եւ զայն աղօթս առ-
նեմ, զի սէրն ձեր եւս քան զեւս ա-
ռաւել լիցի ի գիտութեան եւ յամե-
10 նայն իմաստութեան, Ընտրել ձեզ
զլաւն՝ զի լիցէք [3]հաստատունք եւ ա-
ռանց գայթակղութեան յօրն Քրիստո-
11 սի. Լցեալ պտղովք արդարութեան
ի ձեռն Յիսուսի Քրիստոսի ի փառս
եւ ի գովեստ Աստուծոյ։
12 ԺԴ. Կամիմ թէ գիտիցէք, եղբարք,
զի որ ինչ վասն իմ էր, եւս քան
զեւս ի յառաջադիմութիւն աւետա-
13 րանին եկն. Մինչեւ կապանաց իմոց
յայտնի լինել ի Քրիստոս յամենայն
հրապարակիս եւ առ այլս ամենեսեան.
14 Եւ առ բազում եղբարս ի Տէր, որ
վստահ են կապանօքս իմովք առաւել
եւս համարձակել առանց երկիւղի
15 զբանն Աստուծոյ խօսել։ Ոմանք առ
նախանձու եւ հակառակութեան, եւ
ոմանք մտադիւրութեամբ իսկ զՔրիս-
16 տոս քարոզեն. Եւ ոմանք ի սիրոյ,
քանզի գիտեն եթէ ի պատասխանա-
17 տուութիւն աւետարանին կամ. Եւ
ոմանք առ հեստութեան զՔրիստոս
պատմեն, այլ ոչ սրբութեամբ. քանզի
համարին նեղութիւնս յարուցանել ի
18 վերայ կապանաց իմոց։ Բայց այս զի՞նչ
է. որով օրինակաւ եւ իցէ, եթէ՛
պատճառանօք եւ եթէ՛ ճշմարտու-
թեամբ, Քրիստոս պատմի, եւ ընդ
այս խնդամ, այլ եւ ուրախ եւս եղէց։
19 Զի գիտեմ եթէ այս պահի ինձ ի փրկու-
թիւն ի ձերոց խնդրուածոց եւ ի պար-
գեւաց Հոգւոյն Յիսուսի Քրիստոսի,
20 Ըստ ակնկալութեան եւ յուսոյն իմոյ,
զի մի՛ իւիք յամօթ եղէց, այլ ամե-
նայն համարձակութեամբ, որպէս յա-
մենայն ժամ եւ այժմ, մեծասցի Քրիս-
տոս ի մարմնի իմում, եթէ՛ կենօք եւ
21 եթէ՛ մահու։ Զի ինձ կեանք Քրիս-
22 տոս է, եւ մեռանել՝ շահ։ Ապա եթէ
կեանքս մարմնոյ այս ինձ պտուղ գոր-
ծոյ է, եւ զի՞նչ ընտրեցից՝ զայն ոչ
23 գիտեմ։ Նեղեալ եմ յերկոցունց, զցան-
կալն ելանել եւ ընդ Քրիստոսի լինել
24 առաւել լաւ համարիմ. Եւ կալ մնալ
աստէն ի մարմնի՝ կարեւոր եւս վասն
25 ձեր։ Եւ զայս յուսացեալ գիտեմ, եթէ
կացից եւ մնացից ամենեցուն ձեզ,

[1]կամ, ձեզ զիս
[2]Յոյնն, Զի վկայ
[3]Յոյնն, առանց կեղծաւորութեան

ի ձեր զարգանալ եւ խրախ լինել ի
26 հաւատս․ Զի պարծանք ձեր առաւել
լիցին ի Քրիստոս Յիսուս ինեւ ի միւս-
անգամ գալստեան իմում առ ձեզ։ ՎՋ
27 Միայն թէ արժանի [1]աւետարանին
գնայցէք․ զի եթէ՛ գայցեմ եւ տեսա-
նիցեմ զձեզ, եւ եթէ՛ հեռի իցեմ եւ
լսիցեմ զձէնջ զի հաստատուն կայցէք
ի մի հոգի, եւ միով շնչով նահատա-
28 կիցիք ի հաւատս աւետարանին․ Եւ
մի՛ զանգիտիցէք եւ մի՛ իւիք ի հա-
կառակորդաց անտի, որ է նոցա հան-
դէս կորստեան, եւ ձերոյ փրկութեան։
29 Եւ այդ յԱստուծոյ է, որ ձեզ շնորհե-
ցաւ վասն Քրիստոսի, ոչ միայն ի նա
հաւատալ, այլ եւ վասն նորա չարչա-
30 րել։ Զնոյն պատերազմ ունել՝ զոր
յիմն տեսէք եւ այժմ լսէք [2]յինէն։

ԳԼ․ Բ

1 Արդ եթէ մխիթարութիւն ինչ իցէ
ի Քրիստոս, եթէ սփոփութիւն սիրոյ,
եթէ հաղորդութիւն Հոգւոյ, եթէ
2 գթութիւն եւ ողորմութիւն, Լցէք
զխնդութիւնս իմ, զնոյն խորհիջիք,
զնոյն սէր յանձին ունիջիք, համա-
3 շունչք, միախորհուրդք․ Մի՛ ինչ ըստ
գրգռութեան, եւ մի՛ ինչ ըստ սնա-
պարծութեան, այլ խոնարհութեամբ
զմիմեանս լաւ համարել առաւել քան
4 զանձինս․ Մի՛ զանձանց եւեթ զիտել,
5 այլ՝ իւրաքանչիւր ոք զընկերին։ Զայն
խորհեսցի իւրաքանչիւր ոք ի ձէնջ որ
6 եւ ի Քրիստոս Յիսուս․ Որ ի կերպա-
րանս Աստուծոյ էր, ոչինչ յափշտակու-
թիւն համարեցաւ զլինելն հաւասար
7 Աստուծոյ․ Այլ զանձն ունայնացոյց՝
զկերպարանս ծառայի առեալ, ի նմա-
նութիւն մարդկան եղեալ, եւ կերպա-
8 րանօք գտեալ իբրեւ զմարդ, Խոնար-
հեցոյց զանձն, լեալ հնազանդ մահու
9 չափ եւ մահու խաչի։ Վասն որոյ եւ
Աստուած զնա առաւել բարձրացոյց,
եւ շնորհեաց նմա անուն որ ի վեր է
10 քան զամենայն անուն․ Զի յանուն
Յիսուսի [3]Քրիստոսի ամենայն ծունր
կրկնեսցի, երկնաւորաց եւ երկրաւո-
11 րաց եւ սանդարամետականաց, Եւ
ամենայն լեզու խոստովան լիցի թէ
Տէր է Յիսուս Քրիստոս ի փառս Աս-
տուծոյ Հօր։
12 ԺԶ․ Այսուհետեւ, սիրելիք իմ, որ-
պէս յամենայնի հնազանդեցարուք,
մի՛ միայն ի գալստեան իմում, այլ ա-
ռաւել եւս այժմ յորժամ հեռիս եմ ի
ձէնջ, ահիւ եւ դողութեամբ զանձանց
13 փրկութիւն գործեցէք։ Զի Աստուած
է որ յաջողէ ի ձեզ զկամելն եւ զառ-
14 նելն վասն հաճութեան։ Զամենայն
ինչ գործեցէք առանց տրտնջելոյ եւ
15 քրթմնջելոյ․ Զի եղիջիք ամբիծք եւ
անարատք, որդիք Աստուծոյ, անմեղք
ի մէջ կամակոր եւ խեղաթեւր ազգին,
յորոց միջի երեւիցիք իբրեւ լուսա-
16 ւորք յաշխարհի, Զբանն կենաց ունել
յանձինս ի պարծանս ինձ յաւուրն
Քրիստոսի, զի ոչ ընդունայն ինչ ըն-
թացայ եւ ոչ ընդունայն վաստակեցի։
17 Այլ թէպէտ եւ նուիրիմ ի վերայ պա-
տարագի եւ պաշտաման հաւատոցն ձե-
րոց, խնդամ եւ ուրախակից եմ ամե-
18 նեցուն ձեր։ Նոյնպէս եւ դուք խնդա-
ցէք եւ ուրախակից եղերուք ինձ։
19 Բայց յուսամ ի Տէր Յիսուս զՏիմո-
թէոս վաղվաղակի արձակել առ ձեզ,
զի եւ ինձ սրտի գեւր լինիցի, յորժամ
20 գիտիցեմ ինչ զձէնջ։ Զի ոչ զոք ունիմ
համաշունչ, եթէ ընտանեբար հոգայցէ
21 վասն ձեր։ Զի ամենեքին զանձանց
խնդրեն, եւ ոչ զՅիսուսի Քրիստոսի։
22 Բայց զփորձ նորա գիտէք եւ դուք,
զի իբրեւ որդի հօր ծառայեաց ընդ իս
23 յաւետարանին։ Արդ զսա ակն ունիմ
արձակել՝ որպէս նոյնհետայն զանձնէ
24 տեսանիցեմ։ Այլ յուսացեալ եմ ի Տէր
25 թէ եւ ես իսկ ընդ հուպ եկից։ Բայց
լաւ համարեցայ զԵպափրոդիտոս զեղ-
բայր եւ զգործակից եւ զինուորակից
իմ, զձեր առաքեալ եւ զպաշտօնեայ
26 իմոց պիտոյից՝ առաքել առ ձեզ։ Քանզի
եւ ինքն իսկ յոյժ [4]անձկացեալ է տե-
սանել զամենեսին զձեզ․․ եւ հոգայր,
27 զի ձեր լուեալ էր թէ խօթացաւ։ Եւ
արդարեւ խօթացաւ մերձ ի մահ, այլ
Աստուած ողորմեցաւ նմա․ ոչ նմա
միայն՝ այլ եւ ինձ, զի մի՛ տրտմու-
թիւն ի վերայ տրտմութեան կրիցեմ։
28 Արդ փութապէս յղեցի զնա, զի տեսեալ

[1] Բազումք, աւետարանին Քրիստոսի
[2] Ի Ցուցին՝ յինէն, յիս, յինէն՝ պակասի
[3] Ի Բազումս պակասի

[4] Բազումք, անձկացեալ է ամենեցուն ձեզ

զնա միւսանգամ ուրախ լինիցիք, եւ
29 ես առանց տրտմութեան եղէց։ Ընկալ-
ջիք զնա ի Տէր ամենայն խնդութեամբ,
եւ զայնպիսիսն առ պատուականս ու-
30 նիջիք. Զի վասն գործոյ Տեառն մին-
չեւ ի մահ մերձեցաւ, գուն գործեալ
ոգւովք չափ, զի լցցէ զձեր պակասու-
թիւն խմոյ սպասաւորութեան։ ՎԶ

## ԳԼ. Գ

1 Այսուհետեւ, եղբարք իմ, ուրախ
լերուք ի Տէր. զնոյն գրել առ ձեզ ինձ
ոչ զանգաղելի է, եւ ձեզ կարի զգու-
2 շալի։ Զգոյշ եղերուք ի շանց անտի,
զգոյշ եղերուք ի չար մշակաց անտի,
զգոյշ եղերուք ի կրճատութենէ անտի։
3 Զի թլփատութիւնն մեք եմք, որ [1]Հոգ-
ւովն Աստուծոյ" պաշտեմք, եւ պար-
ծիմք ի Քրիստոս Յիսուս, եւ ոչ ի
4 մարմին պանծացեալ եմք։ Թէպէտ եւ
ես իսկ զնոյն վստահութիւն ունիմ
եւ ի մարմնի. եթէ [2]ոք համարիցի այլ-
ազգ վստահ" լինել ի մարմին, առաւել
5 եւս ես. Թլփատութեամբ ութօրեայ,
յազգէ Իսրայելի, ի ցեղէ Բենիամինի,
Եբրայեցի յԵբրայեցւոյ, ըստ օրինացն
6 փարիսեցի. Ըստ նախանձայոյզն լինե-
լոյ՝ հալածէի զեկեղեցին. ըստ արդա-
րութեան օրինացն՝ լեալ անարատ։
7 Այլ որ ինչ ինձ շահն էր՝ զայն վնաս
8 համարիմ վասն Քրիստոսի։ Այլ եւ
համարիմ իսկ զամենայն վնաս վասն
առաւել գիտութեանն Յիսուսի Քրիս-
տոսի Տեառն մերոյ. վասն որոյ յամե-
նայնէ զրկեցայ, եւ համարիմ կզկզանս,
9 զի զՔրիստոս շահեցայց, Եւ գտայց
ի նմա. իբրեւ ոչ եթէ զիմ ինչ ար-
դարութիւն որ յօրինաց անտի է՝ ու-
նիցիմ, այլ՝ [3]զհաւատոցն Քրիստոսի՝,
որ յԱստուծոյ արդարութիւնն է" հա-
10 ւատովք. Ճանաչել զնա եւ զզօրու-
թիւն յարութեան նորա եւ զհաղոր-
դութիւն չարչարանաց նորա, կերպա-
11 րանակից լինել մահու նորա. Թէ որ-
պէս հասից ի մեռելոցն յարութիւն։
12 Իբր ոչ եթէ արդէն առեալ իցեմ, կամ
արդէն կատարեալ իցեմ. զհետ մտեալ
եմ թէ հասից, [4]մանաւանդ թէ ըմբռ-
նեալ իսկ իցեմ" ի Քրիստոսէ Յիսու-
13 սէ։ Եղբարք, ես ոչ համարիմ զանձն
իմ թէ հասեալ իցեմ. բայց մի ինչ է՝
զի զառ ի յետոյսն մոռացեալ է, եւ ի
14 յառաջադէմսն նկրտեալ եմ. Ուշ եդեալ
ընթանամ ի կէտ [5]կոչմանն Աստուծոյ
15 ի Քրիստոս Յիսուս։ Այսուհետեւ որ
միանգամ կատարեալքդ էք՝ զայս խոր-
հեցարուք, եւ եթէ այլազգ ինչ խոր-
հիցիք, սակայն եւ զայն Աստուած
16 ձեզ յայտնեսցէ։ Բայց յոր ժամանե-
ցաքս, զնոյն խորհել եւ սմին կանոնի
17 միաբան լինել։ Նմանողք ինձ եղիջիք,
եղբարք, եւ դիտասջիք զայնպիսիսն
որ այնպէսն գնայցեն, որպէս ունիքդ
18 զմեզ [6]ձեզ օրինակ։ Զի բազումք գնան,
զորոց բազում անգամ ասէի ձեզ, բայց
արդ եւ լալով իսկ ասեմ, զթշնամեաց
19 խաչին Քրիստոսի։ Որոց կատարածն
կորուստ է, որոց աստուած որովայնն
[6]իւրեանց է, եւ փառք՝ ամօթն իւր-
եանց, որք զերկրաւորս եւեթ խորհին։
20 Այլ մեր առաքինութիւն յերկինս է,
ուստի եւ Փրկչին ակն ունիմք, Տեառն
21 Յիսուսի Քրիստոսի. Որ նորոգեսցէ
զմարմին խոնարհութեան մերոյ՝ կեր-
պարանակից լինել մարմնոյ փառաց իւ-
րոց, ըստ զօրութեանն առ ի կարող
լինելոյ հնազանդեցուցանել ընդ իւրեւ
զամենայն։

## ԳԼ. Դ

1 Այսուհետեւ, եղբարք իմ սիրելիք եւ
անձկալիք, ուրախութիւն իմ եւ պսակ,
այսպէս հաստատուն կացէք ի Տէր,
սիրելիք։
2 Զեւոդիա աղաչեմ եւ զՍիւնտիք ա-
3 ղաչեմ, զնոյն խորհել ի Տէր։ Այո, ա-
ղաչեմ եւ զքեզ, մտերիմ իմ եւ լծա-
կից, եւ դու օգնական լինիջիր նոցա
որք յաւետարանին նահատակեցան ընդ
իս Կղեմաւ հանդերձ եւ այլովք գոր-
ծակցօք իմովք, որոց անուանքն ի
4 դպրութեան կենաց։ Ուրախ լերուք
ի Տէր յամենայն ժամ. դարձեալ ա-
5 սեմ, Ուրախ լերուք։ Հեզութիւն ձեր
յայտնի լիցի ամենայն մարդկան. Տէր

---

[1]Ոմանք, հոգւով զԱստուած
[2]Բազումք, այլ ոք համարիցի վստահ
[3]կամ, զարդարութիւն հաւատովքն Քրիստոսի որ յԱստուծոյ է

[4]Յոյնն, որոյ վասն ըմբռնեալ եմ
[5]Յոյնն, վերին կոչմանն [6]ի Յոյնն պակաս

6 մերձ է ։ Մի՛ ինչ հոգայք , այլ [1]ամե-
նայն աղօթիւք եւ խնդրուածովք , գո-
հութեամբ խնդրուածք ձեր յայտնի
7 լիցին առ Աստուած ։ Եւ խաղաղու-
թիւնն Աստուծոյ որ ի վեր է քան զա-
մենայն միտս՝ պահեսցէ զսիրտս ձեր
եւ զմիտս ի Քրիստոս Յիսուս ։
8 Ակ. Այսուհետեւ , եղբարք , որ ինչ
ճշմարտութեամբ է , որ ինչ պարկեշ-
տութեամբ , որ ինչ արդարութեամբ ,
որ ինչ սրբութեամբ , որ ինչ սիրով ,
որ ինչ համբաւ բարեաց , որ ինչ քա-
ջութեամբ , որ ինչ գովութեամբ՝ զայն
9 խորհիջիք ։ Զոր ուսարուքն եւ ըն-
կալարուք եւ լուայք եւ տեսէք յիս՝
զայն արարէք . եւ Աստուած խաղա-
ղութեան եղիցի ընդ ձեզ ։
10 Ուրախ եղէ ես ի Տէր յոյժ , զի եւ
դուք զմտաւ ածէք հոգալ ինչ վասն
իմ , որպէս եւ հոգայիքն , բայց [2]բար-
11 բարէիք իմնէ՝՝։ Իբր ոչ առ կարօտու-
թեան ինչ ասեմ , զի ես ուսայ որովք
12 կարեմ բաւական լինել ։ Գիտեմ նուա-
ղել , գիտեմ առաւելուլ . յամենայնի
ամենեւին խելամուտ եմ ե՛ւ յագել ե՛ւ
քաղցենալ , ե՛ւ առաւելուլ ե՛ւ նուա-
13 ղել ։ Յամենայնի կարող եմ [3]այնու որ
14 զօրացոյցն զիս ։ Բայց բարւոք արարէք
զի կցորդ եղերուք ինձ ի նեղութեանս ։
15 Գիտէք եւ դուք , Փիլիպեցիք , զի ի
սկզբան աւետարանին իբրեւ ելի ես
ի Մակեդոնիայ , եւ ոչ մի եկեղեցի հա-
ղորդեաց ինձ յաղագս տալոյ եւ առնլոյ ,
16 բայց միայն դուք . Զի եւ ի Թեսաղո-
նիկէ միանգամ եւ երկիցս զպէտս իմ
17 ետուք բերել ։ Իբր ոչ եթէ խնդրեմ
զտուրսն , այլ խնդրեմ զպտուղն որ
18 յաճախէ ի բան ձեր ։ Այլ իմ առեալ
զամենայն եւ առաւելեալ եմ . ընկա-
լայ , եւ լի եմ ի ձեռն Եպափրոդիտեայ ,
որ է ի ձէնջ հոտ անուշից , պատարագ
19 ընդունելի՝ հաճոյ Աստուծոյ ։ Եւ Աս-
տուած իմ լի արասցէ զամենայն պէտս
ձեր ըստ իւրում մեծութեանն փառօք
20 ի Քրիստոս Յիսուս ։ Այլ Աստուծոյ
եւ Հօր մերում փառք յաւիտեանս յա-
ւիտենից ։ Ամէն ։
21 Ողջոյն տաջիք ամենայն սրբոց ի
22 Քրիստոս Յիսուս ։ Ողջոյն տան ձեզ
23 որ ընդ իս են եղբարք ։ Ողջոյն տան
ձեզ ամենայն սուրբք , մանաւանդ որ
24 ի տանէ Կայսեր են ։ Շնորհք Տեառն
Յիսուսի Քրիստոսի [4]ընդ ոգւոյդ ձե-
րում՝՝։ Ամէն ։

Առ Փիլիպեցիս գրեցաւ ի Հռոմէ ի ձեռն
Եպափրոդիտեայ ։

---

[1] Յոյն., յամենայնի [2] Ասորերէն., չէր մարթ
[3] Ոմանք, Քրիստոսիւ

[4] Ոմանք, ընդ ձեզ ընդ ամենեսին

# ԱՌ ԿՈՂՈՍԱՑԻՍ

## ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 ԱԲ· ՊԱՒՂՈՍ, առաքեալ Յիսուսի
Քրիստոսի կամօքն Աստուծոյ, եւ Տի-
2 մոթէոս եղբայր, Առ Կողոսացիս սուրբս
եւ հաւատացեալս եղբարս ի Քրիս-
տոս· շնորհք ընդ ձեզ եւ խաղաղու-
թիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ [1]եւ ի
Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ՟։
3 Գոհանամք զԱստուծոյ եւ զՀօրէ
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, յա-
մենայն ժամ վասն ձեր աղօթս [2]առնել,
4 Իբրեւ լուաք՟ զհաւատսն ձեր որ ի
Քրիստոս Յիսուս [3]ի Տէր մեր՟, եւ
զսէրն զոր ընդ ամենայն սուրբս ունիք·
5 Վասն յուսոյն որ պահի ձեզ յերկինս,
զորմէ յառաջագոյն լուարուք բանիւն
6 ճշմարտութեան աւետարանին, Որ ե-
հաս առ ձեզ, որպէս ընդ ամենայն
աշխարհ աճէ եւ պտղաբերէ, որպէս
եւ ի ձերում միջի, յօրէ յորմէ լուա-
րուք եւ ծանեայք զշնորհսն Աստուծոյ
7 ճշմարտութեամբ· Որպէս եւ ուսա-
րուք յԵպափրեայ սիրելւոյ ծառայակցէ
մերմէ, որ է հաւատարիմ վասն ձեր
8 պաշտօնեայ [4]Յիսուսի· Որ եւ պատ-
մեաց մեզ զձեր սէրն Հոգւով։
9 Վասն այնորիկ եւ մեք, յօրէ յորմէ
լուաք, ոչ դադարեմք վասն ձեր ա-
ղօթս առնել եւ խնդրուածս մատու-
ցանել, զի լնուցուք [5]զգիտութիւն կա-
մաց նորա ամենայն իմաստութեամբ
10 եւ հոգեւոր հանճարով· Գնալ ձեզ ար-
ժանի Տեառն յամենայն հաճութեան,
յամենայն գործս բարութեան պտղա-
բերք եւ աճեցունք գիտութեամբն Աս-
11 տուծոյ· Ամենայն զօրութեամբ զօրա-
ցեալք ըստ զօրութեան փառաց նո-
րա յամենայն համբերութիւն եւ եր-
կայնմտութիւն ուրախութեամբ։
12 ԱԳ· Գոհանալ [6]զՀօրէ որ [7]կոչեացն
[8]զմեզ ի մասն վիճակի սրբոցն ի լոյս·
13 Որ փրկեացն զմեզ յիշխանութենէ խա-
ւարի, եւ փոխեաց [3]զմեզ յարքայու-
14 թիւն Որդւոյն իւրոյ սիրելւոյ· Որով
ունիմք զփրկութիւն արեամբն նորա,
[3]եւ զթողութիւն մեղաց՝ [3]մարմնովն
15 նորա·՟ Որ է պատկեր աներեւութին
Աստուծոյ, անդրանիկ ամենայն արա-
16 րածոց· Զի նովաւ հաստատեցաւ ա-
մենայն որ ինչ յերկինս եւ որ ինչ
յերկրի, որ երեւին եւ որ ոչն երեւին,
եթէ՛ աթոռք, եթէ՛ տէրութիւնք, եթէ՛
պետութիւնք, եթէ՛ իշխանութիւնք·
ամենայն ինչ նովաւ եւ ի նոյն հաս-
17 տատեցաւ· Եւ նա է յառաջ քան զա-
մենայն, եւ ամենայն ինչ նովաւ եկաց
18 բովանդակ· Եւ նա է գլուխ մարմնոյ,
եկեղեցւոյ· որ է սկիզբն, անդրանիկ
ի մեռելոց, զի եղիցի ինքն յամենայնի
19 յառաջացեալ· Զի ի նմա հաճեցաւ ա-
մենայն լրումն [3]Աստուածութեանն
20 բնակել· Եւ նովաւ հաշտեցուցանել
զամենայն ի նոյն, արար խաղաղու-
թիւն արեամբ խաչին իւրոյ, [9]որ ինչ
յերկրի եւ որ ինչ յերկինս։
21 Եւ զձեզ որ երբեմն օտարացեալքն
էիք եւ թշնամիք խորհրդովք ի գործսն
22 չարութեան, Այժմ աւադիկ հաշտե-
ցոյց անդամովք մարմնոյ իւրոյ ի ձեռն
մահուան [1]իւրոյ, յանդիման կացու-
ցանել զձեզ սուրբս եւ ամբիծս եւ

---

[1]Յոմանս պակասէ
[2]Յոյնն, արարեալ, (4) Լուեալ
[3]Ի Յունին պակասէ
[4]Յոյնն, Քրիստոսի
[5]Կամ, գիտութեամբ
[6]Ոմանք, զԱստուծոյ Հօրէ
[7]Բազումք, բաւականս արար
[8]Ոմանք. զձեզ
[9]Յոյնն, նովաւ, որ

23 *անարատս առաջի նորա․ Եթէ կայցէք*
*ի հաւատսն արմատացեալք եւ հաս-*
*տատեալք, եւ անշարժք ի յուսոյ ա-*
*ւետարանին զոր լուարուք, քարոզե-*
*լոյ ընդ ամենայն արարածս ի ներքոյ*
*երկնից, որոյ եղէ ես Պաւղոս պաշ-*
*տօնեայ։*
24 Ա.Դ. *Եւ արդ ուրախ եմ ի չարչա-*
*րանս իմ վասն ձեր, եւ լնում զպակա-*
*սութիւն նեղութեանցն Քրիստոսի ի*
*մարմնի իմում վասն մարմնոյ նորա,*
25 *որ է եկեղեցի․ Որոյ եղէ ես [1]Պաւղոս*
*պաշտօնեայ ըստ տնտեսութեանն Ա-*
*տուծոյ, որ տուեալ է ինձ ի ձեզ կա-*
26 *տարել զբանն Աստուծոյ, Զխորհուրդն*
*որ ծածկեալ էր ի յաւիտեանցն եւ յազ-*
*գաց, որ այժմ յայտնեցաւ սրբոց իւ-*
27 *րոց․ Որոց կամեցաւ Աստուած ցու-*
*ցանել թէ զինչ է մեծութիւն փառաց*
*խորհրդոյն նորա ի հեթանոսս, որ է*
28 *Քրիստոս ի ձեզ, յոյսն փառաց․ Զոր*
*մեքն քարոզեմք, եւ խրատեմք զամե-*
*նայն մարդ, եւ ուսուցանեմք զամե-*
*նայն մարդ ամենայն [1]հոգեւոր իմաս-*
*տութեամբ, զի կացուսցուք զամենայն*
*մարդ կատարեալ ի Քրիստոս Յիսուս․*
29 *Յոր եւ աշխատիմ պատերազմեալ ըստ*
*յաջողութեան նորա որ յաջողեալ է*
*յիս զօրութեամբ։*

ԳԼ. Բ

1 **Կ***ամիմ զի գիտիցէք դուք որպիսի՛*
*ճգնութիւն ունիմ յանձին վասն ձեր եւ*
*վասն Լաւոդիկեցւոցն, եւ որոց չիցէ*
2 *տեսեալ զերեսս իմ մարմնով․ Զի մխի-*
*թարեսցին սիրտք նոցա տեղեկացեալք*
*սիրով, եւ յամենայն մեծութիւն լրու-*
*թեան իմաստութեան՝ ի գիտութիւն*
*խորհրդոյն [2]Աստուծոյ ի Քրիստոս Յի-*
3 *սուս՟․ Յորում ամենայն գանձք իմաս-*
*տութեան եւ գիտութեան ծածկեալ*
4 *կան։ Այլ զայս ասեմ, զի մի՛ ոք զձեզ*
5 *զառանցուսցէ պատիր բանիւք։ Զի*
*թէպէտ եւ մարմնով հեռի եմ, այլ հոգ-*
*ւով ընդ ձեզ եմ․ խնդամ, իբրեւ տե-*
*սանեմ զկարգն ձեր եւ զհաստատու-*
*թիւն հաւատոցն ձերոց որ ի Քրիստոս*
6 *[3]Յիսուս։ Արդ որպէս ընկալարուք*
*զՔրիստոս Յիսուս զՏէր, նովին գնաս-*
7 *ջիք․ Արմատացեալք եւ շինեալք ի նա*
*եւ հաստատեալք ի հաւատս որպէս*
*ուսարուքն, առաւելեալք ի նմին գո-*
*հութեամբ։* Վ.Ձ
8 *Զգոյշ լերուք մի՛ ոք իցէ որ զձեզ*
*կողոպտիցէ ճարտարմտութեամբ եւ*
*սնոտի խաբէութեամբ, որք ըստ մարդ-*
*կան աւանդութեան եւ ըստ տարերց*
*աշխարհիս, եւ ոչ ըստ [1]Յիսուսի Քրիս-*
9 *տոսի․ Զի ի նմա բնակէ ամենայն*
*լրումն Աստուածութեանն մարմնա-*
10 *պէս։ Եւ էք դուք նովաւ լցեալք, որ*
*է գլուխ ամենայն իշխանութեան եւ*
11 *պետութեան․ Որով թլփատեցարուք*
*[3]հաւատովք զանձեռագործ թլփատու-*
*թիւնն՝ ի մերկանալ զանդամս [4]մարմ-*
*նոյ թլփատութեամբն Քրիստոսի․*
12 *Թաղեալք ընդ նմին ի մկրտութեանն,*
*որով եւ ընդ նմին յարեայք հաւա-*
*տովք Աստուծոյ ազդեցութեանն, որ*
13 *յարոյց զնա ի մեռելոց։ Եւ զձեզ որ*
*երբեմն մեռեալն էիք ի մեղս եւ յան-*
*թլփատութեան մարմնոյ ձերոյ՝ կեն-*
*դանացոյց յանձին իւրում․ շնորհեաց*
14 *մեզ զամենայն յանցանս մեր, Եւ ջնջ-*
*եաց զձեռագիր մերոյ հակառակու-*
*թեանն հրամանօքն [3]իւրովք որ կայր*
*մեզ հակառակ, եբարձ զայն ի միջոյ*
*եւ բեւեռեաց ընդ խաչափայտին․*
15 *Մերկեաց զիշխանութիւնս եւ զպե-*
*տութիւնս, յայտ յանդիման խայտա-*
*ռակեաց նշաւակեալ զնոսա յանձին*
*իւրում [3]ի յարութեան իւրում՟։*
16 *Մի՛ ոք այսուհետեւ զձեզ դատեսցի*
*ուտելով կամ ըմպելով կամ մասամբք*
*տօնից, կամ ամսամտիւք, կամ շա-*
17 *բաթուք․ Որ են ստուերք հանդերձե-*
18 *լոցն, այլ մարմին՝ [5]Քրիստոս է։ Մի՛*
*ոք զձեզ խաբեսցէ, որ կամիցի խո-*
*նարհութեամբ եւ կրօնիւք հրեշտա-*
*կաց, զոր չիցէ տեսեալ, զրահետ վա-*
*րել՝ տարապարտ հպարտացեալ ի մտաց*
19 *մարմնոյ իւրոյ․ Եւ ոչ ունիցի զԳլուխն*
*[1]Քրիստոս, ուստի ամենայն մարմինն*
*յօդիւք եւ խաղալեօք տարաբերեալ*
*եւ խառնեալ՝ աճէ զաճումն Աստու-*
20 *ծոյ։ Եթէ մեռարուք ընդ Քրիստոսի*
*ի տարերց աշխարհիս, զի՞ եւս իբրեւ*

---

[1] Ի բազումս պակասէ
[2] Ոմանք, Աստուծոյ Հօր և Քրիստոսի
[3] Ի Յոմանս պակասէ
[4] Ոմանք, մարմնոյ մեղաց
[5] Յոմանս, Քրիստոսի

զկենդանիս աստէն յաշխարհի կրօնա-
21 ւորիք ․ Մի՛ մերձենար , մի՛ ճաշա-
22 կեր , մի՛ հուպ լինիր ․ Որ է ամենայն
ինչ ի պէտս ապականութեան , ըստ
պատուիրանաց եւ վարդապետութեան
23 մարդկան , Որ յիմաստութիւն իմն հա-
մարէ ինքնակամ կրօնիւք եւ խոնար-
հութեամբ եւ անխնայութեամբ մարմ-
նոյ , եւ ոչ ի պատիւ ինչ լրութեան
մարմնոյ ։

## ԳԼ․ Գ

1 Եթէ յարերուք ընդ Քրիստոսի , ապա
զվերինն խնդրեցէք , ուր Քրիստոսն
2 նստի ընդ աջմէ Աստուծոյ ։ Զվերինն
խորհեցարուք , մի՛ զայս որ յերկրի
3 աստ է ։ Քանզի մեռարուք , եւ կեանքն
ձեր ծածկեալ են ընդ Քրիստոսի յԱս-
4 տուած ։ Իսկ յորժամ Քրիստոս յայտ-
նեսցի , կեանքն ձեր , յայնժամ եւ դուք
ընդ նմա յայտնեսջիք փառօք ։
5 Սպանէք այսուհետեւ զանդամս ձեր
զերկրաւորս ․ [1]ի բաց ընկեցէք" զպոռ-
նկութիւն , զպղծութիւն , զբիծ , զցան-
կութիւն չարեաց , եւ զագահութիւն՝
6 որ է կռապաշտութիւն ․ Վասն [2]որոյ
գայ բարկութիւն Աստուծոյ ի վերայ
7 որդւոյն անհաւանութեան ․ Որովք
եւ դուք երբեմն գնայիք , մինչ կեն-
8 դանիքն էիք ի նոսա ։ Արդ ի բաց
թօթափեցէք եւ դուք զայն ամենայն ․
զբարկութիւն , զսրտմտութիւն , զչա-
րութիւն , զհայհոյութիւն , զխեղկա-
9 տակութիւն ի բերանոց ձերոց ։ Մի՛
ստէք միմեանց ․ մերկացարուք զհին
10 մարդն գործովքն իւրովք ․ Եւ զգեցա-
րուք զնորն՝ նորոգեալ ի գիտութիւն
11 ըստ պատկերի Արարչին իւրոյ ․ Ուր
ոչ է Հրեայ եւ ոչ հեթանոս , թլփա-
տութիւն եւ անթլփատութիւն , խուժ
դուժ , Սկիւթացի , ծառայ , ազատ ․
այլ ամենայն եւ յամենայնի Քրիստոս ։
12 Զգեցարուք այսուհետեւ իբրեւ ընտ-
րեալք Աստուծոյ , սուրբք եւ սի-
րեցեալք , զգութ , զողորմութիւն ,
զքաղցրութիւն , զխոնարհութիւն ,
13 զհեզութիւն , զերկայնմտութիւն ․ Նե-
րել միմեանց , շնորհել իրերաց , եթէ
ուրուք զումեքէ տրտունջ ինչ իցէ ․
որպէս [3]Աստուած Քրիստոսիւ" շնորհ-
14 եաց ձեզ , նոյնպէս եւ դուք ։ Եւ ի
վերայ այսր ամենայնի զսէրն՝ որ է
15 զօդ կատարմանն ․ Եւ խաղաղութիւնն
[4]Քրիստոսի հաստատեսցի ի սիրտս ձեր,
յոր եւ կոչեցարուքն միով մարմնով ․
եւ գոհացողք լինիջիք ։
16 ԱԵ․ [1]Զի բանն Քրիստոսի բնակեսցէ
ի ձեզ առատապէս , ամենայն իմաս-
տութեամբ ուսուցանել եւ խրատել
զմիմեանս , սաղմոսիւք եւ օրհնու-
թեամբք եւ երգովք հոգեւորօք՝ [1]եւ
շնորհօք օրհնել ի սիրտս ձեր զԱս-
17 տուած ։ Եւ զամենայն զոր եւ առնի-
ցէք բանիւք եւ արդեամբք , զամենայն
յանուն Տեառն Յիսուսի արասջիք ․ գո-
հացողք լինիջիք զԱստուծոյ եւ զՀօրէ
նովաւ ։
18 Կանայք , հնազանդ լերուք արանց
19 ձերոց , որպէս եւ վայել է ի Տէր ։ Արք,
սիրեցէք զկանայս ձեր , եւ [5]մի՛ դառ-
20 նացուցանէք զնոսա" ։ Որդիք , հնա-
զանդ լերուք ծնողաց ձերոց յամե-
նայնի , զի այն է հաճոյ առաջի Տեառն ։
21 Հարք , մի՛ զայրացուցանէք զորդիս
22 ձեր , զի մի՛ տրտմեսցին ։ Ծառայք ,
հնազանդ լերուք տերանց ձերոց յա-
մենայնի , մի՛ առ ականէ ծառայու-
թեամբ իբրեւ մարդահաճոյք , այլ միա-
մտութեամբ սրտի երկնչել ի Տեառնէ ․
23 Զոր ինչ առնիցէք՝ սրտի մտօք գոր-
ծեսջիք , իբրեւ Տեառն եւ ոչ իբրեւ
24 մարդկան ։ Գիտասջիք զի ի Տեառնէ
առնուցուք զհատուցումն ժառանգու-
թեան [6]ձերոյ ․ քանզի Տեառն Քրիս-
25 տոսի ծառայէք ։ Իսկ ապիրատն ըն-
կալցի ըստ իւրում ապիրատութեանն ,
զի չիք ակնառութիւն [6]առաջի Աս-
տուծոյ" ։

## ԳԼ․ Դ

1 Տեարք , զիրաւունս եւ զհաւասարու-
թիւն ծառայից ձերոց շնորհեցէք , գի-
տասջիք զի եւ ձեր Տէր գոյ յերկինս ։
2 Աղօթից ստէպ կացէք , տքնել ի նմին
3 գոհութեամբ ։ Աղօթս արարէք միան-
գամայն եւ վասն մեր , զի Աստուած

---

[1] Ի Յունին պակասէ

[2] Յոյն , որոց

[3] Ի Յոյն օրինակաց ոմանք՝ Տէր , այլք՝ Քրիստոս

[4] Ոմանք , Աստուծոյ

[5] Յոյն , մի՛ դառնասջիք առ նոսա

[6] Ի Բազումս պակասէ

*բացցէ մեզ դուռն բանին՝ խօսել զխոր-*
*հուրդն Քրիստոսի, վասն որոյ եւ կապ-*
4 *եալս կամ, Զի յայտնի արարից զնա,*
*որպէս արժան իցէ ինձ խօսել ։*
5 Ա.Զ. *Իմաստութեամբ գնասջիք առ*
*արտաքինսն՝ զնոց առեալ զժամանակս։*
6 *Եւ բանն ձեր յամենայն ժամ լի շնոր-*
*հօք [1]Տեառն՝ իբրեւ՝՝ աղիւ համեմեալ*
*լիցի, գիտել որպէս արժան իցէ ձեզ*
*իւրաքանչիւր ումեք տալ պատաս-*
*խանի ։*
7 *Այլ որ ինչ զինէն իցէ՝ ցուցցէ ձեզ*
*զամենայն Տիւքիկոս սիրելի եղբայր*
*եւ հաւատարիմ պաշտօնեայ եւ ծա-*
8 *ռայակից ի Տէր ․ Զոր առաքեցի առ*
*ձեզ զմին իրի, զի գիտասջիք վասն*
*մեր, եւ մխիթարեսցէ զսիրտս ձեր,*
9 *Ոնեսիմաւ հանդերձ եղբարբ հաւա-*
*տարմաւ եւ սիրելեաւ որ է ի ձէնջ ․*
*զամենայն ինչ ցուսցեն ձեզ որ ինչ*
10 *աստ է ։ Ողջոյն տայ ձեզ Արիստարքոս*
*գերեկից իմ, եւ Մարկոս եղբօրորդի*
*Բառնաբայ ․ (վասն որոյ առէք պատ-*
*ուէր եթէ եկեսցէ առ ձեզ, ընկալջիք*
11 *զնա ․) Եւ Յիսուս որ անուանեալն է*
*Յուստոս, որք են ի թլփատութենէ*
*անտի ․ զի դոքա միայն գործակից ե-*
*ղեն ինձ յարքայութեանն Աստուծոյ,*
*որք եւ եղեն իսկ ինձ մխիթարութիւն ։*
12 *Ողջոյն տայ ձեզ Եպափրաս որ ի ձէնջ*
*ծառայ Քրիստոսի Յիսուսի է ․ յամե-*
*նայն ժամ պատերազմեալ վասն ձեր*
*յաղօթս, զի կայցէք կատարեալք եւ*
*լցեալք յամենայն կամս Աստուծոյ ։*
13 *Վկայեմ նմա, զի բազում աշխատու-*
*թիւն ունի վասն ձեր եւ վասն Լաւո-*
*դիկեցւոցն, եւ վասն այնոցիկ որ յԵ-*
14 *րապոլիսն են ։ Ողջոյն տայ ձեզ Ղու-*
*կաս բժիշկ [1]եւ սիրելի, եւ Դեմաս ։*
15 *Ողջոյն տաջիք եղբարց որ են ի Լա-*
*ւոդիկիա, եւ Նիմփայ եւ որ առտնին*
16 *եկեղեցին է նորա ։ Եւ յորժամ ըն-*
*թեռնուցու առ ձեզ թուղթդ, արաս-*
*ջիք զի եւ ի Լաւոդիկեցւոց եկեղեցւոջն*
*ընթերցցի ․ եւ զառ ի Լաւոդիկեցւոցն՝*
17 *զի եւ դուք ընթեռնուցուք ։ Եւ ասաս-*
*ջիք ցԱրքիպպոս, Զգոյշ լեր սպասա-*
*ւորութեանդ զոր ընկալար ի Տէր, զի*
18 *զայդ կատարեսցես ։ Ողջոյնդ ձեռին*
*իմոյ Պաւղոսի է ․ յուշ լիցին ձեզ կա-*
*պանքս իմ ։ Շնորհք ընդ ձեզ ։[2]*

Առ Կողոսացիս գրեցաւ ի Հռոմէ ի ձեռն
Տիւքիկոսի և Ոնեսիմոսի։

---

[1] ի Յունին պակասէ

[2] Ոմանք ի Յոյն և ի Հին ձեռագրաց յաւելուն, Ամէն ։

# ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ ԱՌԱՋԻՆ

## ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 ԲԿ. ՊԱՒՂՈՍ եւ Սիղուանոս եւ Տի-
մոթէոս, եկեղեցւոյդ Թեսաղոնիկե-
ցւոց յԱստուած Հայր մեր եւ ի Տէր
2 Յիսուս Քրիստոս. Շնորհք ընդ ձեզ
եւ խաղաղութիւն[1]:
Գոհանամք զԱստուծոյ յամենայն
ժամ վասն ձեր ամենեցուն յիշատակ
3 առնել յաղօթս մեր, Անդադար յիշել
զձեր գործն հաւատոց եւ զվաստակ
սիրոյ եւ զհամբերութիւն յուսոյ Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի առաջի Ա-
4 տուծոյ եւ Հօր մերոյ. Գիտէք, եղ-
բարք սիրեցեալք յԱստուծոյ, զընտ-
5 րութիւնն ձեր. Զի աւետարանն մեր
ոչ եղեւ առ ձեզ միայն բանիւ, այլ եւ
զօրութեամբ եւ Հոգւով Սրբով եւ
լրութեամբ բազմաւ, որպէս եւ գիտէք
իսկ թէ որպիսիք եղեաք ի միջի ձե-
6 րում վասն ձեր: Եւ դուք նմանեալք
մեզ եւ Տեառն՝ ընկալայք զբանն ի բա-
զում նեղութեան խնդութեամբ Հոգ-
7 ւոյն Սրբոյ. Լինել ձեզ օրինակ ամե-
նայն հաւատացելոց որ են ի Մակեդո-
8 նիա եւ յԱքայիա: Զի ի ձէնջ հնչեաց
բանն [2]Աստուծոյ, ոչ միայն ի Մակե-
դոնիա եւ յԱքայիա, այլ յամենայն
տեղիս հաւատքն ձեր որ առ Աստուած
են՝ սփռեցան, զի այսուհետեւ ոչինչ
9 է պիտոյ մեզ եւ խօսել ինչ: Զի նո-
քին իսկ պատմեն վասն մեր, թէ որ-
պէս եղեւ մեզ մուտ առ ձեզ, եւ որ-
պէս դարձայք առ Աստուած ի կռոց
անտի՝ ծառայել Աստուծոյ կենդանւոյ
10 եւ ճշմարտի, Եւ ակն ունել Որդւոյ
նորա յերկնից, զոր յարոյց ի մեռե-
լոց, զՅիսուս, որ [3]փրկելոցն է՝՝ զմեզ
ի բարկութենէ անտի որ գալոցն է:

### ԳԼ. Բ

1 ԲԴ. Դուք ինքնին գիտէք, եղբարք,
զմուտն մեր առ ձեզ, զի ոչ ընդու-
2 նայն ինչ եղեւ. Այլ յառաջագոյն չար-
չարեալք եւ թշնամանեալք որպէս եւ
դուք իսկ գիտէք, ի մէջ Փիլիպեցւոց,
համարձակեցաք Աստուծով մերով՝
պատմել ձեզ զաւետարանն Աստուծոյ
3 մեծաւ պատերազմաւ: Զի [4]մխիթա-
րութիւնն մեր ոչ ի մոլորութենէ է եւ
ոչ ի պղծութենէ եւ ոչ նենգութեամբ.
4 Այլ որպէս ընտրեցաք յԱստուծոյ հա-
ւատարիմ լինել աւետարանին, նոյն-
պէս եւ խօսիմք, ոչ իբրեւ մարդկան
հաճոյ լինել, այլ Աստուծոյ որ քննէ
5 զսիրտս մեր: Զի ոչ երբեք բանիւք
ողոքանաց եղեաք առ ձեզ, որպէս եւ
դուք իսկ գիտէք, եւ ոչ ի պատճառս
ագահութեան, որպէս եւ Աստուած
6 վկայ է. Եւ ոչ խնդրէաք փառս ի մարդ-
7 կանէ, ոչ ի ձէնջ եւ ոչ յայլոց: Կա-
րող էաք որպէս Քրիստոսի առաք-
եալս ծանրանալ, այլ եղեաք հեզք ի
միջի ձերում, որպէս դայեակ մի՝ որ
8 սնուցանիցէ [5]մանկունս: Նոյնպէս եւ
մեք զթայաք ի ձեզ, հաճոյ թուէր մեզ
տալ ձեզ ոչ միայն զաւետարանն Ա-
տուծոյ, այլ եւ զանձինս մեր, քանզի
9 սիրելիք մեր եղերուք: [6]Յիշէք, եղ-
բարք, զվաստակն մեր եւ զջան, զի
զցայգ եւ զցերեկ գործէաք վասն չծան-
րանալոյ ումեք ի ձէնջ, եւ քարոզէաք
10 ձեզ զաւետարանն Աստուծոյ: Դուք

---

[1] Ոմանք յաւելուն, յԱստուծոյ Հօրէ մերմէ և ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ
[2] Բազումք, Տեառն
[3] Յոյնն, փրկէն
[4] Կամ, յորդորումն
[5] Յոյնն, զմանկունս իւր
[6] Յոյնն, Քանզի յիշէք

ինքնին վկայէք, եւ Աստուած, ո՛րպէս
սրբութեամբ եւ արդարութեամբ եւ
անբծութեամբ ձեզ հաւատացելոցդ եղ-
11 եաք. Որպէս եւ գիտէք իսկ, զի զիւ-
րաքանչիւր ոք ի ձէնջ, իբրեւ հայր
12 զորդիս, Մխիթարէաք եւ սփոփէաք
եւ դնէաք վկայութիւն գնալ ձեզ ար-
ժանապէս Աստուծոյ, որ կոչեացն զձեզ
13 յիւր արքայութիւնն եւ ի փառս: Վասն
այնորիկ եւ մեք գոհանամք զԱստու-
ծոյ անպակաս, զի առեալ զլուր բա-
նին Աստուծոյ առ ի մէնջ՝ ընկալա-
րուք, ոչ իբրեւ զբան մարդկան, այլ
որպէս ճշմարտիւ զբան Աստուծոյ,
որ եւ յաջողեալ իսկ է ի ձեզ հաւա-
14 տացեալսդ: Զի դուք նմանողք եղե-
րուք, եղբարք, եկեղեցեացն Աստու-
ծոյ որ են ի Հրէաստանի ի Քրիստոս
Յիսուս. զի զնոյն չարչարանս չար-
չարեցայք եւ դուք ի ձերոց ազգակա-
15 նաց, որպէս եւ նոքայն ի Հրէից. Որք
եւ զՏէրն Յիսուս սպանին եւ [1]զմար-
գարէսն, եւ զմեզ հալածեցին, եւ
Աստուծոյ յաչաց ելին, եւ ամենայն
16 մարդկան հակառակ եղեն. Եւ ար-
գելուին զմեզ խօսել հեթանոսաց զի
ապրեսցին, զի կատարեսցեն զմեղս
իւրեանց յամենայն ժամ. քանզի հաս-
եալ է ի վերայ նոցա բարկութիւն մին-
չեւ ի սպառ:
17 ԲՋ. Այլ մեք, եղբարք, թէպէտ եւ
որբ մնացաք ի ձէնջ առ ժամանակ մի
երեսօք եւ ոչ սրտիւք, առաւել եւս
փութացաք տեսանել զերեսս ձեր մե-
18 ծաւ ցանկութեամբ: Վասն այսորիկ
կամեցայ գալ առ ձեզ ես Պաւղոս մի
անգամ եւ երկիցս, եւ խափանեաց
19 զմեզ Սատանայ: Քանզի ո՞վ է մեր յոյս
կամ խնդութիւն կամ պսակ պարծա-
նաց մերոց, եթէ ոչ դուք [2]ի Տէր ա-
ռաջի Տեառն մերոյ Յիսուսի [3]Քրիս-
20 տոսի ի նորա գալստեանն: Զի դուք
էք փառք մեր եւ խնդութիւն:

ԳԼ. Գ

1 Վասն որոյ ոչ եւս ունիմք ժոյժ, զի
բարւոք թուեցաւ մեզ միայն մնալ
2 յԱթէնս. Եւ առաքեցաք զՏիմոթէոս
զեղբայր [4]մեր եւ զգործակից աւետա-
րանին Աստուծոյ եւ Հօրն Քրիստոսի՝՝,
հաստատել զձեզ եւ մխիթարել վասն
հաւատոցն ձերոց: ՎՋ
3 Զի մի՛ տագտկայցէք ի նեղութիւնս
յայսոսիկ. քանզի դուք ինքնին իսկ
4 գիտէք զի ի սոյն կամք. Քանզի մինչ
առ ձեզն իսկ էաք, յառաջագոյն ա-
սէաք ձեզ թէ նեղութիւնք հասանելոց
են ի վերայ մեր, որպէս եւ եղեւ իսկ,
5 եւ գիտացէք: Վասն այնորիկ եւ ես,
զի ոչ եւս ունէի ժոյժ, առաքեցի գի-
տել զհաւատսն ձեր, գուցէ արդեւք
փորձեաց եւ զձեզ փորձիչն, եւ ըն-
6 դունայն լինիցի ջանն մեր: Բայց արդ
իբրեւ եկն Տիմոթէոս ի ձէնջ առ մեզ,
եւ ետ մեզ զաւետիս հաւատոցն ձե-
րոց եւ զսիրոյ, զի ունիք ի մտի զյի-
շատակս մեր բարեաց յամենայն ժամ,
ցանկացեալ էք տեսանել զմեզ, որպէս
7 եւ մեք զձեզ. Վասն այնորիկ մխիթա-
րեցաք ի ձեզ, եղբարք, ի վերայ ամե-
նայն վշտաց եւ նեղութեանց մերոց՝
8 ի ձեռն հաւատոցն ձերոյ. Զի այժմ
կենդանի եմք, եթէ դուք հաստատուն
9 կայցէք ի Տէր: Զի՞նչ կարեմք գոհու-
թիւն մատուցանել Աստուծոյ վասն
ձեր ի վերայ ամենայն խնդութեանն
զոր խնդամք վասն ձեր առաջի Աս-
10 տուծոյ մերոյ, Զցայգ եւ զցերեկ ա-
ռաւել եւս աղաչեմք տեսանել զերեսս
ձեր, եւ հաստատել զպակասութիւն
11 հաւատոցն ձերոց: Այլ ինքն Աստուած
եւ Հայր մեր եւ Տէր մեր Յիսուս Քրիս-
տոս ուղղեսցէ զճանապարհս մեր առ
12 ձեզ: Եւ զձեզ ինքն Տէր բազմապա-
տիկս եւ առաւելս արասցէ սիրով ընդ
միմեանս եւ առ ամենեսին, որպէս
13 եւ մեք ի ձեզ, Հաստատել զսիրտս
ձեր անարատս ի սրբութիւն առաջի
Աստուծոյ եւ Հօր մերոյ ի գալստեանն
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի հան-
դերձ ամենայն սրբովք իւրովք:

ԳԼ. Դ

1 ԳԿ. Այսուհետեւ, եղբարք, աղաչեմք
զձեզ եւ մխիթարեմք [5]ի Քրիստոս Յի-
սուս՝՝, զի որպէս ընկալարուք ի մէնջ,

---

[1] Ոմանք, զմարգարէս իւրեանց
[2] ի Յունէն պակասէ
[3] Յոմանս պակասէ

[4] ի Յունէն՝ ոմանք, մեր և զպաշտօնեայ Աստուծոյ և զգործակից մեր յաւետարանին Քրիստոսի. այլք՝ մեր և զպաշտօնեայ Աստուծոյ յաւետարանին Քրիստոսի
[5] Բազումք, ի Տէր Յիսուս

թէ ո՛րպէս պարտ իցէ ձեզ գնալ եւ հա-
ճոյ լինել Աստուծոյ · որպէս եւ գնայքդ
իսկ, զի եւս քան զեւս յաւելուցուք
2 ի նոյն ։ Եւ գիտէք թէ որպիսի պատ-
ուիրանս տուաք ձեզ ի Տէր Յիսուս ։
3 Զի այս են կամք Աստուծոյ՝ սրբու-
թիւն ձեր, ի բաց լինել ձեզ ի պոռնը-
4 կութենէ · Գիտել իւրաքանչիւր ումեք
ի ձէնջ զիւր աման ստանալ սրբու-
5 թեամբ եւ պատուով · Մի՛ ի ցաւս ցան-
կութեան, որպէս եւ [1]այլ հեթանոսք
6 որ ոչ գիտեն զԱստուած ։ Մի՛ զան-
ցանել եւ զրկել յիրիք յայգմիկ զեղ-
բայր իւր, քանզի վրէժխնդիր է Տէր
ի վերայ ամենայնի այդորիկ · որպէս
յառաջագոյն ասացաք ձեզ եւ եդաք
7 վկայութիւն ։ Քանզի ոչ կոչեաց զմեզ
Աստուած ի պղծութիւն, այլ՝ ի սրբու-
8 թիւն ։ Այսուհետեւ որ անարգէ, ոչ
զմարդ անարգէ, այլ զԱստուած, որ
եւ ետ զՀոգին Սուրբ [2]ի ձեզ ։
9 Այլ վասն եղբայրսիրութեան չէ ինչ
պիտոյ գրել առ ձեզ, զի դուք ինքնին
իսկ աստուածուսոյցք էք առ ի զմիմ-
10 եանս սիրելոյ ։ Քանզի եւ առնէք իսկ
զգոյն յամենայն եղբարս որ են յամե-
նայն կողմանս Մակեդոնացւոց · աղա-
չեմք զձեզ, եղբարք, առաւել եւս ա-
11 ռաւելուլ եւ առատանալ · Հանգարտել
եւ գործել զիւրաքանչիւր, եւ գործել
ձեռօք ձերովք, որպէս եւ պատուիրե-
ցաք ձեզ, զի գնայցէք պարկեշտու-
թեամբ առ արտաքինսն, եւ մի՛ իւիք
կարօտեալք իցէք ։
12 Ոչ կամիմ, եղբարք, եթէ տգէտք
իցէք վասն ննջեցելոցն, զի մի՛ տրտմի-
ցիք որպէս եւ այլքն որոց ոչ գոյ յոյս ։
13 Եթէ հաւատամք եթէ Յիսուս մեռաւ
եւ յարեաւ, նոյնպէս եւ Աստուած
զննջեցեալսն ի ձեռն Յիսուսի ածցէ
14 ընդ նմա ։ [3]Բայց զայս ասեմք" Տեառն
բանիւ, եթէ մեք որ կենդանիքս եմք
մնացեալք ի գալստեանն Տեառն՝ ոչ
15 [4]ժամանեմք ննջեցելոցն" ։ Զի ինքնին
Տէր հրամանաւ, ի ձայն հրեշտակապե-
տի եւ ի փող Աստուծոյ իջանէ յերկ-
նից, եւ մեռեալք ի Քրիստոս յարիցեն
16 յառաջագոյն ։ Ապա եւ մեք որ կեն-
դանւոյն մնացեալ իցեմք՝ նոքօք հան-
դերձ յափշտակեսցուք ամպովք ընդ
առաջ Տեառն յօդս, եւ այնպէս յամե-
17 նայն ժամ ընդ Տեառն լինիցիմք ։ Այ-
սուհետեւ մխիթարեցէք զմիմեանս բա-
նիւքս այսոքիւք ։

Գլ· Ե

1 Գդ· Այլ վասն ժամուց եւ ժամանա-
կաց, եղբարք, չէ ինչ պիտոյ գրել առ
2 ձեզ · Զի դուք ինքնին իսկ ստոյգ գի-
տէք, թէ օրն Տեառն իբրեւ զգող գի-
3 շերի՝ այնպէս հասանէ ։ Յորժամ ասի-
ցեն թէ խաղաղութիւն եւ շինութիւն
է, յայնժամ յանկարծակի հասցէ նոցա
սատակումն, որպէս երկն յղւոյ, եւ
4 մի՛ ապրեսցեն ։ Այլ դուք, եղբարք,
ոչ էք ի խաւարի թէ օրն ձեր իբրեւ
5 զգող ի վերայ հասանիցէ · Զի ամենե-
քին դուք որդիք լուսոյ էք եւ որդիք
տուընջեան · չեմք գիշերոյ, չեմք խա-
6 ւարի ։ Ապա մի՛ ղքնով ննջեսցուք
որպէս եւ այլքն, այլ արթունք եւ
7 զուարթունք եղիցուք ։ Զի որ ննջենն՝
գիշերի ննջեն, եւ որ արբենանն՝ գի-
8 շերի արբենան ։ Այլ մեք զի տուընջեան
եմք, արթունք եղիցուք, եւ զգեցցուք
զզրահսն հաւատոյ եւ զսիրոյ, եւ դի-
ցուք զսաղաւարտն յուսոյն փրկու-
9 թեան ։ Զի ոչ եդ զմեզ Աստուած ի
բարկութիւն, այլ ի փրկութիւն կեն-
դանութեան ի ձեռն Տեառն մերոյ Յի-
10 սուսի Քրիստոսի, Որ մեռաւն վասն
մեր · զի եթէ՛ արթունք իցեմք եւ
եթէ՛ ննջիցեմք, նովաւ հանդերձ կեց-
11 ցուք ։ Վասն որոյ մխիթարեցէք զմիմ-
եանս եւ շինեցէք զմիեանս, որպէս
եւ առնէքդ իսկ ։
12 Գզ· Աղաչեմք զձեզ, եղբարք, ճա-
նաչել զվաստակաւորս եւ զվերակա-
ցուս ձեր ի Տէր, եւ զխրատիչս ձեր ·
13 Եւ համարեցարուք զնոսա արժանիս
առաւել սիրոյ վասն գործոյ նոցա ·
խաղաղութիւն արարէք ընդ միմեանս ·
14 Աղաչեմք զձեզ, եղբարք, խրատեցէք
զստահակս, մխիթարեցէք զկարճա-
միտս, պատսպարան լերուք տկարաց,
երկայնամիտ լերուք առ ամենեսին ։
15 Զգոյշ լերուք գուցէ ոք չարի չար հա-
տուցանիցէ · այլ յամենայն ժամ զբար-
եաց զհետ երթայք առ միմեանս եւ

[1] Ի Յունին պակասէ
[2] Ոմանք, ի մեզ
[3] Յոյնն, Քանզի զայս ասեմք ձեզ
[4] Կամ, յառաջեմք քան զննջեցեալսն

16 առ ամենեսին ։ Յամենայն ժամ ուրախ
17 լերուք ։ Անդադար աղօթս արարէք ։
18 Յամենայնի գոհացարուք, զի այս են
կամք Աստուծոյ Քրիստոսիւ Յիսու-
19 սիւ ի ձեզ ։ Զհոգին մի՛ շիջուցանէք ։
20 Զմարգարէութիւնս մի՛ արհամարհէք ։
21 Զամենայն ինչ փորձեցէք, զբարին ըն-
22 կալարուք ։ Յամենայն իրաց չարաց
23 ի բաց կացէք ։ Եւ ինքն Աստուած խա-
ղաղութեան սուրբ արասցէ զձեզ հա-
մօրէնս. եւ բովանդակ ձեր ոգի եւ
շունչ եւ մարմին անարատ ի գալուստ
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի պա-
24 հեսցի ։ Հաւատարիմ է որ կոչեացն
զձեզ, որ եւ արասցէ զնոյն ։
25 Եղբարք, աղօթս արարէք եւ ի մեր
26 վերայ ։ Ողջոյն տաջիք եղբարց ամենե-
27 ցուն ի համբոյր սրբութեան ։ Երդմնե-
ցուցանեմ զձեզ ի Տէր ընթեռնուլ
զթուղթդ առաջի ամենայն եղբարց
28 սրբոց ։ Շնորհք Տեառն մերոյ Յիսու-
սի Քրիստոսի ընդ ձեզ ։[1]

Առ Թեսաղոնիկեցիս առաջին Բովմէ գրեցաւ յԱթենայ ։

# ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ ԵՐԿՐՈՐԴ

## ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 Դկ. ՊԱՒՂՈՍ եւ Սիղուանոս եւ Տի-
մոթէոս, եկեղեցւոյդ Թեսաղոնիկեցւոց
յԱստուած Հայր մեր եւ ի Տէր Յի-
2 սուս Քրիստոս. Շնորհք ընդ ձեզ եւ
խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ
եւ ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ ։
3 Գոհանալ պարտիմք զԱստուծոյ յա-
մենայն ժամ վասն ձեր, եղբարք, որ-
պէս եւ արժան իսկ է. զի եւս քան
զեւս աճեն հաւատք ձեր, եւ յաճախէ
սէր իւրաքանչիւր ամենեցուն ձեր առ
4 միմեանս. Որպէս եւ մեզ ձեւք պար-
ծել յեկեղեցիսն Աստուծոյ վասն համ-
բերութեան ձերոյ եւ հաւատոց յամե-
նայն հալածանս ձեր եւ ի նեղութիւնս,
5 որում դուքն համբերէք. Յօրինակ
արդար դատաստանին Աստուծոյ, ար-
ժանի լինել ձեզ արքայութեանն Աս-
տուծոյ, վասն որոյ եւ չարչարիք
6 կրէք. Եթէ պարտ է առաջի Աստուծոյ
հատուցանել նեղչացն ձերոց նեղու-
7 թիւն. Եւ ձեզ նեղելոցդ հանգիստ
ընդ մեզ ի յայտնութեանն Տեառն մե-
րոյ Յիսուսի յերկնից հրեշտակօք զօ-
8 րութեան իւրոյ, Ի բոց հրոյ առնուլ
զվրէժս յայնցանէ ոյք ոչ ճանաչեն զԱս-
տուած, եւ որ ոչ հնազանդին աւետա-
րանին Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
9 տոսի. Որք տայցեն վրէժս ի սատա-
կումն յաւիտենից յերեսաց Տեառն եւ
10 ի փառաց զօրութեան նորա, Յորժամ
գայցէ փառաւոր լինել ի մէջ սրբոց
իւրոց, եւ սքանչելի ի մէջ ամենայն
հաւատացելոց, (զի հաւատարիմ եղեւ
վկայութիւնն մեր ի վերայ ձեր,) յաւուր
11 յայնմիկ ։ Յոր եւ աղօթս առնեմք վասն
ձեր յամենայն ժամ, զի զձեզ արժա-
նիս արասցէ կոչմանն [2]ձերում [3]Աս-
տուած, մինչեւ՛՛ լցցէ զամենայն հա-
ճութիւն բարութեան, եւ զգործս հա-
12 ւատոցն զօրութեամբ. Զի փառաւոր
լիցի անուն Տեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի ի ձեզ, եւ դուք՝ ի նմա,
ըստ շնորհացն Աստուծոյ մերոյ եւ
Տեառն Յիսուսի Քրիստոսի ։

---
[1] Ոմանք յաւելուն, Ամէն ։
[2] Յոմանս պակասի
[3] Բազումք, Աստուած մեր, և

## ԳԼ. Բ

1 դդ. Աղաչեմ զձեզ, եղբարք, վասն
գալստեան Տեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի, եւ մերոյ ժողովելոյն առ
2 նա, Մի՛ վաղվաղակի խռովել ձեզ ի
մտաց եւ մի՛ զարհուրել, մի՛ հոգւով
եւ մի՛ բանիւ եւ մի՛ թղթովք իբրեւ
թէ ի մէնջ, որպէս թէ եկեալ հասեալ
3 իցէ օր Տեառն. Մի՛ ոք զձեզ խաբեսցէ
եւ մի՛ իւիք իրօք. զի եթէ ոչ նախ
եկեսցէ ապստամբութիւնն, եւ յայտ-
նեսցի մարդն անօրէնութեան, որդին
4 կորստեան, Հակառակորդն հպարտա-
ցեալ ի վերայ ամենայնի որ անուան-
եալ իցէ Աստուած կամ պաշտօն, մին-
չեւ նստել նմա ի տաճարին [1]Աստու-
ծոյ, եւ ցուցանել զանձն թէ Աստուած
5 իցէ. Ո՞չ յիշիցէք զի մինչ առ ձեզն
6 իսկ էի, ասէի զայս: Եւ արդ դուք
ինքնին գիտէք զայն որ ունին, յայտ-
7 նել նմա յիւրում ժամանակի. Զի
խորհուրդն անօրէնութեան արդէն իսկ
զօրանայ. բայց ցայնժամ՝ մինչ ի միջոյ
8 բարձցի որ այժմդ ունի: Եւ ապա
յայտնեսցի անօրէնն. զոր Տէր [2]Յի-
սուս սատակեսցէ հոգւով բերանոյ իւ-
րոյ, եւ խափանեսցէ յայտնութեամբ
9 գալստեանն իւրոյ. Որոյ գալուստն
ըստ ազդեցութեան Սատանայի է ամե-
նայն զօրութեամբ եւ նշանօք եւ ար-
10 ուեստիւք ստովք, Եւ ամենայն պատ-
րանօք անիրաւութեան ի վերայ կո-
րուսելոյն. փոխանակ զի զսէրն ճշմար-
տութեան ոչ ընկալան, զի ապրեսցին.
եւ վասն այնորիկ առաքեսցէ նոցա
Աստուած ազդեցութիւն մոլորութեան
11 հաւատալ նոցա ստութեանն. Զի դա-
տապարտեսցին ամենեքեան որ ոչ հա-
ւատացին ճշմարտութեանն, այլ հա-
ճեցան ընդ անօրէնութիւնն:
12 Այլ մեք պարտիմք գոհանալ զԱս-
տուծոյ յամենայն ժամ վասն ձեր, եղ-
բարք սիրեցեալք ի Տեառնէ, զի ընտ-
րեաց [3]զմեզ Աստուած ի սկզբանէ ի
փրկութիւն սրբութեամբ Հոգւոյն եւ
13 հաւատովքն ճշմարտութեան. Յոր եւ
կոչեաց զձեզ աւետարանաւն մերով
ի փրկութիւն փառացն Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի:
14 Այսուհետեւ, եղբարք, հաստատուն
կացէք եւ պինդ կալարուք զաւան-
դութիւնսն զոր ուսարուք, եթէ՛ բա-
15 նիւ եւ եթէ՛ թղթով մերով, Այլ ինքն
Տէր մեր Յիսուս Քրիստոս եւ Աս-
տուած եւ Հայր մեր, որ սիրեաց
զմեզ եւ ետ մեզ մխիթարութիւն յա-
ւիտենից եւ յոյս բարեաց շնորհօք,
16 Մխիթարեսցէ զսիրտս ձեր եւ հաս-
տատեսցէ յամենայն բանս եւ ի գործս
բարութեան:

## ԳԼ. Գ

1 դջ. Այսուհետեւ, եղբարք, աղօթս
արարէք ի վերայ մեր, զի բանն Տեառն
ընթանայցէ, եւ փառաւոր լինիցի յա-
մենայն տեղիս, որպէս եւ առ ձեզ.
2 Զի ապրեսցուք յանօրինաց եւ յանզգա-
մաց մարդոց. զի ոչ ամենեցուն են
3 հաւատք: Այլ հաւատարիմ է Տէր, որ
եւ հաստատեսցէ զձեզ եւ պահեսցէ
4 ի չարէ անտի: Վստահ եմք ի ձեզ
Տերամբ, թէ զոր պատուիրեցաքն ձեզ,
5 ե՛ւ առնէք ե՛ւ առնիցէք. Այլ Տէր
ուղղեսցէ զսիրտս ձեր ի սէրն Աստու-
ծոյ եւ ի համբերութիւնն Քրիստոսի.
6 Պատուիրեմ ձեզ, եղբարք, յանուն
Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի,
խորշել ձեզ յամենայն եղբօրէ որ ստա-
հակսն գնայցեն, եւ ոչ ըստ աւան-
դութեանն զոր ընկալարուք ի մէնջ.
7 Զի դուք ինքնին գիտէք թէ ո՛րպէս
պարտ է ձեզ նմանել մեզ. զի ոչ եր-
8 բեք ստահակեցաք առ ձեզ, Եւ ոչ ձրի
զուրուք հաց կերաք, այլ ջանիւ եւ
վաստակով զցայգ եւ զցերեկ գործէաք
9 վասն չծանրանալոյ ումեք ի ձէնջ. Ոչ
եթէ չունէաք իշխանութիւն, այլ զի
զանձինս օրինակ արասցուք ձեզ՝ նմա-
10 նողս լինել մեզ: Քանզի մինչ առ ձեզն
իսկ էաք, զայս պատուիրէաք ձեզ,
թէ Որ ոչն կամիցի գործել, եւ կերիցէ
11 մի՛: Արդ լսեմք զոմանց ի ձէնջ թէ
ստահակութեամբ գնան, գործ ինչ ոչ
գործեն, այլ յուլացեալ հետաքրքիր
12 շրջին: Այնպիսեացն պատուէր տամք,
եւ աղաչեմք ի Տէր Յիսուս Քրիստոս,
զի հանդարտութեամբ գործեսցեն եւ
13 զիւրեանց հաց կերիցեն. Այլ դուք,

---

[1] Ոմանք, Աստուծոյ իբրեւ զԱստուած
[2] Յոմանս պակասէ
[3] Բազումք, զձեզ

եղբարք, մի՛ ձանձրանայք զբարիս
14 գործել։ Ապա եթէ ոչ ոք հնազանդեսցի
բանիս մերում թղթովդ այդուիկ,
զուք նշանակեսջիք զնա, եւ մի՛ խառնակեսջիք
ընդ նմա, զի պատկառեսցէ։
15 Բայց մի՛ իբրեւ զթշնամի համարեսջիք,
այլ խրատեսջիք իբրեւ զեղբայր։
16 Եւ ինքն Տէր խաղաղութեան տացէ
ձեզ խաղաղութիւն յամենայն ժամ
յամենայն իրս. Տէր ընդ ամենեսին
17 ընդ ձեզ։ Ողջոյն իմոյ ձեռին Պաւղոսի
է, որ է նշանակ յամենայն թուղթս.
18 այսպէս գրեմ։ Շնորհք Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի ընդ ամենեսին
ձեզ։

Առ Թեսաղոնիկեցիս երկրորդ՝ գրեցաւ
յԱթենայ։

# ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ ԱՌԱՋԻՆ

## ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 ԱԿ. ՊԱՒՂՈՍ, առաքեալ Յիսուսի
Քրիստոսի ըստ հրամանի Փրկչին մերոյ
Աստուծոյ եւ Քրիստոսի Յիսուսի
2 յուսոյն մերոյ. Տիմոթեայ, որդւոյ սիրելւոյ
հաւատովք, շնորհք, ողորմութիւն,
խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ
եւ ի Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ։
3 Որպէս աղաչեցի զքեզ կալ յԵփեսոս,
մինչ երթայի ի Մակեդոնիա, զի
պատուէր տացես ոմանց չլինել օտար-
4 ուսմունս, Եւ չհայել յառասպելս եւ
ի տոհմաթիւս անչափս. որ մանաւանդ
խնդիրս յուզեն, եւ ոչ [1]զտնտեսու-
5 թիւն Աստուծոյ հաւատովք։ Քանզի
գլուխ պատուիրանին սէր է, ի սուրբ
սրտէ եւ ի մտաց բարեաց եւ յանկեղ-
6 ծաւոր հաւատոց. Յորոց ոմանք վրիպեցան՝
խոտորեալք յունայնութիւն
7 բանից. Կամին լինել վարդապետք օրինաց,
ինքեանք ոչ իմանան զինչ
խօսին, եւ ոչ վասն որոց պնդեալն են։
8 Գիտեմք եթէ բարւոք են օրէնք, եթէ
9 ոք զնոսա օրինօք կրեսցէ։ Բայց զայս
գիտասցէ, զի ի վերայ արդարոց օրէնք
ոչ կան, այլ ի վերայ անօրինաց եւ
անհնազանդից, ամբարշտաց եւ մեղաւորաց,
անսրբոց եւ պղծոց, զհայր եւ
զմայր [2]անարգողաց, մարդասպանաց,
10 Պոռնկաց, արուագիտաց, մարդեղուզաց,
ստոց, ստերդմանց, եւ եթէ այլ
ինչ իցէ հակառակ ողջամիտ վարդա-
11 պետութեանս, Որ ըստ աւետարանի
փառաց երանելւոյն Աստուծոյ է, որում
եղէ ես հաւատարիմ։ ՎՁ
12 Շնորհ ունիմ այնմիկ որ զօրացոյցն
զիս, [3]ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր՝՝,
զի հաւատարիմ համարեցաւ կարգել
13 ի սպասաւորութիւն. Որ յառաջագոյն
հայհոյիչն էի եւ հալածիչ եւ թշնամանիչ,
այլ գտի ողորմութիւն, զի
զայն յանգիտութեան եւ յանհաւա-
14 նութեան գործէի. Եւ առաւել եղեն
շնորհք Տեառն մերոյ հաւատովքն եւ
15 սիրով որ ի Քրիստոս Յիսուս։ Հաւատարիմ
է բանս եւ ամենայն ընդունելութեան
արժանի է, զի Քրիստոս
Յիսուս եկն յաշխարհ փրկել զմեղա-
16 ւորս որոց գլուխն ես եմ։ Այլ վասն
այնորիկ գտի ողորմութիւն, զի նախ
յիս եցոյց Յիսուս Քրիստոս զամենայն

[1] Ոմանք, զշինութիւն

[2] Յոյնն, Հարկանողաց

[3] Յոյնն, Քրիստոսի Յիսուսի Տեառն մերում

երկայնմտութիւն յօրինակ այնոցիկ որ
հաւատալոցն իցեն ի նա ի կեանսն յա-
17 ւիտենից։ Այլ Թագաւորին յաւիտե-
նից, անեղծի եւ աներեւութի, [1]միոյն
Աստուծոյ", փառք եւ պատիւ յաւիտ-
եանս յաւիտենից։ Ամէն։
18 Զայս պատուիրան աւանդեմ քեզ,
որդեակ իմ Տիմոթէոս, ըստ կանխե-
լոց ի քեզ մարգարէութեանցն, զի դու
զինուորիցես նոքօք զգեղեցիկ զինուո-
19 րութիւնն. Ունիցիս հաւատս սրբովք
մտօք, զոր ոմանց մերժեալ յանձանց
իւրեանց՝ նաւաբեկեցան ի հաւատսն.
20 Որոց սակի են Հիմենոս եւ Աղեք-
սանդրոս, զորս մատնեցի Սատանայի,
զի խրատեսցին չհայհոյել։

ԳԼ. Բ

1 Եւ արդ աղաչեմ նախ քան զամենայն
առնել աղօթս, խնդրուածս, պաղա-
տանս, գոհութիւնս վասն ամենայն
2 մարդկան. [2]Մանաւանդ վասն թագա-
ւորաց եւ ամենայն իշխանաց, զի խա-
ղաղութեամբ եւ հանդարտութեամբ
վարեսցուք զկեանս մեր ամենայն
աստուածպաշտութեամբ եւ սրբու-
3 թեամբ։ Զի այն է բարի եւ ընդունելի
4 առաջի Փրկչին մերոյ Աստուծոյ, Որ
զամենայն մարդիկ կամի զի կեցցեն եւ
ի գիտութիւն ճշմարտութեան եկես-
5 ցեն։ Զի մի է Աստուած, եւ մի միջ-
նորդ Աստուծոյ եւ մարդկան, մարդն
6 Յիսուս Քրիստոս, Որ ետ զանձն փրր-
կանս ընդ ամենեցուն՝ վկայութիւն
7 ժամանակաց իւրոց. Յոր եղայ ես քա-
րոզ եւ առաքեալ, (ճշմարիտ ասեմ
[3]ի Քրիստոս եւ ոչ ստեմ,) [2]եղէ վար-
դապետ հեթանոսաց հաւատովք եւ
ճշմարտութեամբ։
8 Արդ. Կամիմ զի արք կայցեն յաղօթս
յամենայն տեղիս, բառնայցեն զսուրբ
ձեռս ի վեր առանց բարկութեան եւ
9 երկմտութեան։ Նոյնպէս եւ կանայք
ի զարդ խոնարհութեան ակնածու-
թեամբ եւ զգաստութեամբ զարդարել
զանձինս, մի՛ ի հիւսս ոսկեմանս ըն-
դելուզեալս մարգարտով, կամ ի հան-
10 դերձս պաճուճեալս, Այլ, որպէս վա-
յելէ կանանց զաստուածպաշտութիւն
յանձն առելոց, գործովք բարութեան։
11 Կին մարդ [4]ցածութեամբ ուսցի, ամե-
12 նայն հնազանդութեամբ։ Այլ ուսու-
ցանել կնոջ մարդոյ ոչ հրամայեմ, եւ
ոչ ճոխաբան լինել քան զայր մարդ,
13 այլ ի լռութեան կալ։ Զի Ադամ նախ
14 ստեղծաւ եւ ապա Եւա։ Եւ Ադամ
ոչ պատրեցաւ, այլ կինն պատրեցաւ
15 եւ յանցեաւ. Բայց կեցցէ վասն որ-
դեծնութեանն, եթէ կայցեն ի հաւատս
եւ ի սէր եւ ի սրբութիւն պարկեշ-
տութեամբ։

ԳԼ. Գ.

1 Հաւատարիմ է բանս, եթէ ոք եպիս-
կոպոսութեան ցանկայ, բարւոյ գոր-
2 ծոյ ցանկայ։ Պարտ է եպիսկոպոսին
անարատ լինել, միոյ կնոջ այր, [5]հեզ,
ցած, պարկեշտ, հիւրասէր, ուսուցիչ.
3 Մի՛ թշնամանող, [6]մի՛ հարկանող, այլ"
հանդարտ. մի՛ կռուող, մի՛ արծաթա-
4 սէր. Զի իւրում տանն իսկ բարւոք
վերակացու լեալ իցէ, որդեակս ու-
նիցի որ ի հնազանդութեան կայցեն
5 ամենայն պարկեշտութեամբ։ (Ապա
եթէ ոք իւրում տանն վերակացու
չգիտիցէ լինել, զիա՞րդ եկեղեցւոյ Աս-
6 տուծոյ խնամակալ լիցի։) Մի՛ մատա-
ղատունկ, զի մի՛ հպարտացեալ ի դա-
7 տաստանս Սատանայի անկանիցի։ Այլ
պարտ է նմա վկայութիւն բարի եւ
յարտաքնոցն ունել. զի մի՛ ի նախա-
տինս անկանիցի եւ յորոգայթս Սա-
տանայի։
8 Նոյնպէս եւ զսարկաւագունս պար-
կեշտս. մի՛ երկբանս, մի՛ գինեսէրս, մի՛
9 զօշաքաղս. Այլ ունիցին զխորհուրդ
10 հաւատոցն սուրբ մտօք։ Ինքեանք
նախ փորձեսցին, եւ ապա ի պաշտօնն
11 մատիցեն, զի անարատք իցեն։ Նոյն-
պէս եւ կանայք նոցա պարկեշտք. մի՛
չարախօսք, [5]հեզք, հաւատարիմք յա-
12 մենայնի։ Սարկաւագք լինիցին միոյ
կնոջ արք, որոց որդւոց իւրեանց բար-
ւոք վերակացու լեալ իցեն եւ տանց
13 իւրեանց. Զի որ բարւոքն պաշտիցեն՝
աստիճան բարի անձանց իւրեանց շա-

[1]Ոմանք, միայնոյ իմաստնոյն Աստուծոյ
[2]Ի Յոյնին պակասէ
[3]Յոմանս պակասէ

[4]Յոյնն, լռութեամբ
[5]Յոյնն, արթուն, լաւ, զգաստ
[6]Ոմանք, մի՛ հարկանող, մի՛ զօշաքաղ, այլ

հին , եւ բազում համարձակութիւն ի
հաւատսն որ ի Քրիստոս Յիսուս ։ վՁ
14 Զայս գրեմ առ քեզ , զի ակն ունիմ
15 ի մօտոյ գալ ․ Ապա թէ յամեցից , զի
գիտասցես թէ ո՛րպէս պարտ իցէ քեզ
ի տան Աստուծոյ շրջել , որ է եկեղե-
ցի Աստուծոյ կենդանւոյ , սիւն եւ
16 հաստատութիւն ճշմարտութեան ։ Եւ
յայտնի իսկ մեծ է խորհուրդն աս-
տուածպաշտութեան , [1]որ երեւեցաւ
մարմնով , արդարացաւ Հոգւով , յայտ-
նեցաւ հրեշտակաց , քարոզեցաւ ի հե-
թանոսս , հաւատարիմ եղեւ յաշխարհի
եւ վերացաւ փառօք ։

ԳԼ․ Դ

1 ԱԶ․ Այլ Հոգին Սուրբ յայտնապէս
ասէ թէ ի ժամանակս յետինս քակես-
ցին ոմանք ի հաւատոցն , եւ հայեսցին
յայսս մոլորութեան եւ ի վարդապե-
2 տութիւնս դիւաց , կեղծաւորութեամբ
ստախօսաց , խարեալք իւրեանց խղճիւն
3 մտաց ․ Որ արգելուցուն յամուսնա-
նալոյ , եւ մեկնիցեն ի կերակրոց զոր
Աստուած հաստատեաց ի վայելել [2]հա-
ւատացելոց , եւ որք հասեալ իցեն ի
4 ճշմարտութեանն վերայ ։ Զի ամենայն
արարածք Աստուծոյ բարի են , եւ չիք
ինչ խոտան ․ մանաւանդ որ գոհու-
5 թեամբ ընդունիցին ․ Զի սրբի բանիւն
6 Աստուծոյ եւ աղօթիւք ։ Զայս խրատ
տուեալ եղբարց՝ բարւոք պաշտօնեայ
լինիցիս Քրիստոսի Յիսուսի , սնանի-
ցիս բանիւք հաւատոց եւ բարւոք վար-
դապետութեամբն զորոյ զհետն իսկ
7 եկեր ։ Այլ ի պիղծ բանից եւ յառաս-
պելաց պառաւանց հրաժարեսջիր , բայց
կրթեա զանձն քո յաստուածպաշտու-
8 թիւն ․ Զի մարմնոյ կրթութիւն առ
սակաւ ինչ օգտակար է , իսկ աս-
տուածպաշտութիւն առ ամենայն ինչ
օգտակար է , եւ զաւետիս կենաց ունի
9 զարդիս եւ զհանդերձելոցն ։ Հաւա-
տարիմ է բանս եւ ամենայն ընդու-
10 նելութեան արժանի է ։ Զի ի սոյն իսկ
վաստակեմք եւ նախատինս յանձն առ-
նումք , զի յուսացեալ եմք յԱստուած
կենդանի , որ է Փրկիչ ամենայն մարդ-
կան , մանաւանդ հաւատացելոց ։

11 ԲԿ․ Պատուէր տացիր զայդ եւ ու-
12 սուցանիջիր ։ Զի մի՛ ոք զքո մանկու-
թիւնդ արհամարհիցէ ․ այլ օրինակ լի-
նիջիր հաւատացելոց բանիւք , գնա-
ցիւք , սիրով , հաւատով , սրբու-
13 թեամբ ։ Մինչեւ գամ ես , միտ դիր ըն-
թերցուածոյ , մխիթարութեան , վար-
14 դապետութեան ։ Մի՛ անփոյթ առներ
զշնորհացդ որ ի քեզ են , որ տուաւ
քեզ մարգարէութեամբ ի ձեռնադրու-
15 թենէ երիցութեան ։ Յայդ խորհեաց
եւ ի դոյն կանխեսջիր , զի քո յառաջա-
դիմութիւնդ ամենեցուն յայտնի լիցի ։
16 Զգոյշ լինիջիր անձին եւ վարդապե-
տութեանդ եւ ի դմին յամեսջիր ․ զայդ
եթէ առնիցես , ե՛ւ զանձն ապրեցուս-
ցես , ե՛ւ զայնոսիկ որ քեզն լսիցեն ։

ԳԼ․ Ե

1 Զծերն մի՛ պատուհասիցես , այլ մխի-
թարեսջիր իբրեւ զհայր ․ զերիտա-
2 սարդս՝ իբրեւ զեղբարս , Զպառաւունս՝
իբրեւ զմարս , զմանկամարդս՝ իբրեւ
3 զքորս ամենայն սրբութեամբ ։ Զայրիս
պատուեա որ ստոյգ այրիքն իցեն ։
4 Ապա թէ ոք այրի որդիս եւ թոռունս
ունիցի , ուսանիցին նախ իւրեանց
տանց բարի առնել , եւ զփոխարէնն
հատուցանել ծնողացն ․ զի այն է բարի
5 եւ ընդունելի առաջի Աստուծոյ ։ Իսկ
որ ճշմարտիւ այրին իցէ եւ մենացեալ ,
[3]յուսացեալ յԱստուած , եւ [4]կանխեալ
յաղօթս եւ ի խնդրուածս զցայգ եւ
6 զցերեկ ․ Իսկ զիրգ այրին կենդանւոյն
7 մեռեալ է ։ Զայս պատուիրեա զի ա-
8 նարատք իցեն ։ Իսկ եթէ ոք իւրոց
եւ մանաւանդ ընտանեաց խնամ ոչ
տանիցի , ի հաւատոցն ուրացեալ է ,
9 եւ չար եւս քան զանհաւատսն է ։ Այրի
ընդ այրիս անուանեսցի որ չիցէ պա-
կաս ի վաթսնամենից , միոյ առն կին
10 լեալ , Եւ ի գործս բարիս վկայեալ ․
եթէ մանկունս սնուցեալ իցէ , եթէ
զհիւրս ընկալեալ իցէ , եթէ զսրբոց
զոտս լուացեալ իցէ , եթէ նեղելոց բա-
ւական լեալ իցէ , եթէ զամենայն գոր-
11 ծոց բարեաց զհետ երթեալ իցէ ։ Այլ ի
մանկամարդաց այրեացն հրաժարեա ,
զի յորժամ խայտան զՔրիստոսիւ ,

[1] Ոմանք , Աստուած
[2] Բազումք , գոհութեամբ հաւատացելոց

[3] Յոյնն , յուսայ [4] Յոյնն , կանխէ

12 ամուսնանալ կամին․ Իսկ զդատապա-
տանս ընդունին, զի զառաջին հա-
13 ւատսն արհամարհեցին։ Միանգամայն
եւ դատարկանձունք ուսանին, շրջողք
տանէ ի տուն․ եւ ոչ միայն դատարկք,
այլ եւ փասքուսք եւ հետաքրքիրք․
14 եւ խօսին որ ինչ ոչ է պիտոյ։ Կամիմ
զմանկամարդացդ ամուսնանալ, որդիս
ծնանել, տնարարս լինել, եւ մի՛ ինչ
պատճառս տալ հակառակորդին ի հայ-
15 հոյութեան աղագս։ Զի արդէն իսկ
ոմանք խոտորեցան զկնի Սատանայի։
16 Եթէ ոք հաւատացեալ՝ այրիս ունիցի,
բաւական լիցի նոցա, եւ մի՛ ծանրասս-
ցի եկեղեցւոյն, զի ճշմարիտ այրեացն
բաւական լինիցի։
17 ԲԴ․ Որ բարւոք վերակացու լինին
երիցունք՝ կրկին պատուոյ արժանի ե-
ղիցին, մանաւանդ որ աշխատիցին բա-
18 նիւ եւ վարդապետութեամբ։ Քանզի
ասէ գիր, Մի՛ կապեսցես զցռուկ եզին
կալոտւոյ, եւ՝ Արժանի է մշակն վար-
19 ձու իւրոյ։ Զերիցուէ չարախօսու-
թիւն մի՛ ընդունիցիս, բայց եթէ եր-
20 կուք եւ երիւք վկայիւք։ Իսկ որ մե-
ղանչեննն՝ առաջի ամենեցուն յանդի-
21 մանեա, զի եւ այլքն երկիցեն։ Վկա-
յութիւն դնեմ առաջի Աստուծոյ եւ
Յիսուսի Քրիստոսի եւ ընտրելոց հրեշ-
տակաց, զի զայդ պահեսցես առանց
մտահաճութեան, մի՛ ինչ առնել աչա-
22 ռանօք։ Ձեռս վաղվաղակի յուրուք
վերայ մի՛ դնիցես, եւ մի՛ կցորդ լինի-
ցիս մեղաց օտարաց․ զանձն քո սուրբ
պահեսջիր։
23 Այսուհետեւ մի՛ ջուր եւեթ ըմպի-
ցես, այլ սակաւիկ մի եւ գինի խառ-
նեսջիր վասն ստամոքսի եւ ստէպ
հիւանդութեանց։
24 Են մարդք որոց մեղքն յայտնի են,
եւ յառաջագոյն հասեալ ի դատաստան,
25 եւ են՝ որոց զկնի երթան։ Նոյնպէս
եւ բարի գործքն յայտնի են․ եւ որ այ-
լազգ եւս ինչ իցեն՝ թաքչել ոչ կարեն։

Գլ․ Զ

1 Որ միանգամ ընդ լծով ծառայութեան
իցեն, զիւրաքանչիւր տեարս [1]պատուի
արժանի համարեսցին, զի մի՛ անունն
Աստուծոյ եւ վարդապետութիւնն հայ-
2 հոյեսցի։ Իսկ որ հաւատացեալ տեարս
ունիցին, մի՛ արհամարհեսցեն զի եղ-
բարք են, այլ առաւել ծառայեսցեն,
զի հաւատացեալքն են եւ սիրունք,
որք զբարերարութիւնն յանձին ունի-
ցին․ զայս ուսուցանիջիր եւ մխիթա-
3 րեսջիր։ Իսկ եթէ ոք այլազգ ինչ ու-
սուցանիցէ, եւ ոչ անսայցէ ողջմտու-
թեան բանից Տեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի, եւ ըստ աստուածպաշ-
4 տութեան վարդապետութեանն, Այն-
պիսին հպարտացեալ է եւ ոչինչ ոչ
գիտէ, այլ տառապի ի խնդիրս եւ ի բանս
հակառակութեան․ ուստի լինին նա-
խանձ, հեռ, հայհոյութիւնք, կարծիք
5 չարեաց, Խարդախութիւնք ապակա-
նելոց մտաց մարդկան եւ օտարացելոց
ի ճշմարտութենէ անտի, որք շահա-
վաճառ համարին զաստուածպաշտու-
թիւնն․ բայց դու մերժեսջիր յայն-
պիսեաց անտի։
6 ԲԶ․ Այլ շահավաճառ մեծ աստուած-
պաշտութիւնն է բաւականութեամբ
7 հանդերձ։ Զի ոչ բերաք ինչ յաշխարհս,
8 [2]եւ ոչ՝ տանել ինչ կարասցուք։ Այլ
ունիմք կերակուր եւ հանդերձս, եւ
9 այնու շատասցուք։ Իսկ որք կամինն
մեծանալ՝ անկանին ի փորձութիւն եւ
յորոգայթ եւ ի բազում ցանկութիւնս
անմիտս եւ վնասակարս, որք ընկղմեն
զմարդիկ ի սատակումն եւ ի կորուստ։
10 Զի արմատ ամենայն չարեաց արծաթ-
սիրութիւն է․ որում ոմանց ցանկա-
ցեալ՝ մոլորեցան ի հաւատոցն, եւ զան-
ձինս արկին ընդ բազում ցաւովք։
11 Այլ դու, ո՛վ մարդ Աստուծոյ, փա-
խիր յայնցանէ, եւ երթ զհետ արդա-
րութեան, զաստուածպաշտութեան,
զհաւատոց, զսիրոյ, զհամբերութեան,
12 զհեզութեան․ Եւ մարտիր զբարւոք
մարտն հաւատոց, եւ բուռն հար զկե-
նացն յաւիտենականաց յոր կոչեցարն,
եւ դաւանեցեր զբարւոք դաւանու-
13 թիւն առաջի բազում վկայից։ Պատ-
ուիրեմ քեզ առաջի Աստուծոյ որ կեն-
դանի առնէ զամենայն, եւ Յիսուսի
Քրիստոսի որ վկայեաց առաջի Պոն-
տացւոյ Պիղատոսի զբարւոք դաւա-
14 նութիւնն, Պահել քեզ զպատուիրանն

[1]Յոյնն, ամենայն պատուոյ

[2]Ոմանք, և յայտ իսկ է թէ և ոչ

*անբիծ, անարատ, մինչեւ ի յայտնու-
թիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
15 տոսի. Զոր յիւր ժամանակս ցուցցէ
Երանելին եւ միայն Հզօր, Թագաւոր
16 թագաւորաց եւ Տէր տերանց. Որ
միայն ունի զանմահութիւն՝ բնակեալ
ի լոյս անմատոյց. զոր ոչ ոք ետես ի
մարդկանէ եւ ոչ տեսանել կարող է,
որում պատիւ եւ զօրութիւն յաւիտ-
եանս ։ Ամէն ։*

17 *Մեծատանց որ են յայսմ աշխարհի՝
պատուէր տաջիր մի՛ հպարտանալ եւ
մի՛ յուսալ ի մեծութիւն մնոտի, այլ
[1]յԱստուած որ տայ մեզ զամենայն ա-
18 ռատապէս ի վայելել, Զբարիս գործել,
մեծանալ գործովք բարութեան, ա-
ռատս, [2]սիրունս, հաղորդս լինել.
19 Գանձել անձանց հիմն բարի ի հան-
դերձեալսն, զի բուռն հարկանիցեն
[3]զճշմարիտ կենացն՝՝ ։*

20 *Ով Տիմոթէէ, պահեա զաւանդն՝
խոտորեալ [4]ի պղծոց եւ ի նորաձայն
բանից եւ ի հակառակութենէ եւ ի
21 մոլարանուն գիտութենէ՝՝, Զոր ոմանց
յանձն առեալ՝ վրիպեցան ի հաւատոց
անտի ։ Շնորհք ընդ քեզ ։[5]*

Առ Տիմոթէոս առաջին թուղթն գրեցաւ
ի Լաւոդիկէայ, որ է մայր քաղաքաց Պա-
կատիանացւոց ։

# ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ ԵՐԿՐՈՐԴ

## ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 գկ. ՊԱՒՂՈՍ, *առաքեալ Յիսուսի
Քրիստոսի կամօքն Աստուծոյ, ըստ
աւետեաց կենացն որ ի Քրիստոս Յի-
2 սուս, Տիմոթեայ որդւոյ սիրելւոյ
շնորհք, ողորմութիւն եւ խաղաղու-
թիւն յԱստուծոյ Հօրէ եւ ի Քրիստոսէ
Յիսուսէ Տեառնէ մերմէ ։*

3 *Շնորհ ունիմ Աստուծոյ զոր պաշ-
տեմն ի նախնեաց մտօք սրբովք, իբրեւ
զի անպակաս ունիմ զքէն յիշատակ
4 յաղօթս իմ զցայգ եւ զցերեկ. Ցան-
կացեալ եմ տեսանել զքեզ՝ յիշատակ-
եալ զարտասուսն քո, զի լցայց ու-
5 րախութեամբ. Զմտաւ ածեալ զան-
խիղճ հաւատսն որ են ի քեզ, որ յա-
ռաջագոյն բնակեցաւ ի հանոյ քում
Լաւոդեայ, եւ ի մօր քում Եւնիկեայ.
6 հաստատեալ եմ թէ եւ ի քեզ է ։ Վասն
որոյ յիշեցուցանեմ քեզ արծարծել
զշնորհսն Աստուծոյ որ են ի քեզ ի
7 ձեռնադրութենէ իմմէ ։ Զի ոչ ետ մեզ
Աստուած հոգի վհատութեան, այլ զօ-
րութեան եւ սիրոյ եւ զգաստութեան։
8 Մի՛ այսուհետեւ ամօթ համարիցիս
զվկայութիւն Տեառն մերոյ, եւ մի՛
զիս զկապեալ նորա. այլ կցորդ լեր
չարչարանաց աւետարանին ըստ զօ-
9 րութեանն Աստուծոյ. Որ փրկեացն
զմեզ եւ կոչեաց ի կոչումն սուրբ, ոչ
ըստ գործոց մերոց, այլ ըստ իւրում
յառաջադրութեանն եւ շնորհաց, որ
տուաւ մեզ ի Քրիստոս Յիսուս յառաջ
քան զժամանակսն յաւիտենից ։*

10 գդ. *Բայց յայտնեցաւ այժմիկ յերեւել
Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի. որ
խափանեաց զմահ եւ լուսաւոր արար
զկեանս եւ զանեղծութիւն ի ձեռն*

---

[1]Ոմանք, յԱստուած կենդանի

[2]Ի Յունին պակասէ

[3]Ոմանք, զկենացն յաւիտենականաց

[4]Յոյնն, ի պղծոց բանից մնոտեաց (Բ Տիմ. Բ. 16) և հակառակութեանց մոլարանուն գիտութեան

[5]Ոմանք յաւելուն, Ամէն ։

11 աւետարանին. Որոյ եդայ ես քարոզ
եւ առաքեալ եւ վարդապետ հեթանո-
12 սաց։ Վասն որոյ եւ զայս չարչարանս
կրեմ, այլ ոչինչ ամօթ համարիմ,
քանզի գիտեմ յո հաւատացեալն եմ,
եւ հաստատեալ եմ թէ կարող է զա-
13 ւանդն իմ պահել յօրն յայն։ Ունիցիս
օրինակ ողջմտութեան բանիցն զորս
յինէն լուար, հաւատովք եւ սիրով
14 որ ի Քրիստոս Յիսուս։ Զքարւոք
աւանդն պահեսջիր ի ձեռն Հոգւոյն
Սրբոյ ի մեզ բնակելոյ։
15 Զայս գիտասջիր զի մեկնեցան ի
մէնջ ամենեքին որ էին յԱսիա, որոց
սակի են Փիգեղոս եւ Հերմոգենէս։
16 Տացէ Աստուած ողորմութիւն տանն
Ոնեսիփորայ, զի բազում անգամ հան-
գոյց զիս, եւ զկապանս իմ ոչ ամօթ
17 համարեցաւ. Այլ իբրեւ եկն ի Հռովմ,
սնդազոյնս խնդրեաց զիս եւ եգիտ.
18 (Տացէ նմա Տէր ողորմութիւն գտանել
ի Տեառնէ յաւուրն յայնմիկ.) եւ որ-
չափ ինչ միանգամ յԵփեսոս սպաս կա-
լաւ [1]ինձ՝ զայն դու ինքնին քաջ գիտես։

ԳԼ. Բ

1 Այլ դու, որդեակ իմ, զօրացիր շնոր-
2 հօքն որ ի Քրիստոս Յիսուս։ Եւ զոր
լուար յինէն բազում վկայիւք՝ զայն
աւանդեսցես հաւատարիմ մարդոց,
որք բաւական իցեն եւ զայլս ուսու-
ցանել։
3 ԳԶ. Վշտակից լեր իբրեւ զքարւոք
4 զինուոր Քրիստոսի Յիսուսի։ Ոչ ոք
զինուորեալ աստէն ընդ կեանս աշ-
խարհիս պատադի, եթէ զօրավարին
5 հաճոյ լինիցի։ Եւ եթէ մարտիկ ոք
իցէ, ոչ պսակի, եթէ ոչ ըստ օրինին
6 մարտիցէ։ Եւ հողագործին աշխատելոյ
7 պարտ է նախ ի պտղոյն վայելել։ Իմա՛
զինչ ասեմս. տացէ քեզ Տէր իմաս-
8 տութիւն յամենայնի. Յիշեա զՔրիս-
տոս Յիսուս յարուցեալ ի մեռելոց, ի
զաւակէ Դաւթի, ըստ աւետարանիս
9 իմում. Յորում չարչարիմ կապանօք
չափ իբրեւ զչարագործ, այլ բանն Աս-
10 տուծոյ ոչ եթէ կապեալ իցէ։ Վասն
այնորիկ ամենայնի համբերեմ վասն
ընտրելոցն, զի եւ նոքա փրկութեանն
հասանիցեն որ ի Քրիստոս Յիսուս
11 [2]երկնաւոր փառօքն հանդերձ։ Հաւա-
տարիմ է բանս. զի եթէ ընդ նմա մե-
12 ռաք, ընդ նմին եւ կեցցուք. Եթէ
համբերեմք, ընդ նմին եւ թագաւո-
րեսցուք. եւ եթէ ուրանամք, եւ նա
13 ուրանայ զմեզ. Եւ եթէ չհաւատամք,
նա հաւատարիմ մնայ, ուրանալ զանձն
իւր ոչ կարէ։
14 ԿԻՐ. Զայս յուշ արասջիր՝ վկայու-
թիւն եդեալ առաջի [3]Աստուծոյ, մի՛
բանակռիւ լինել յոչինչ պէտս ի կոր-
15 ծանումն լսողաց։ Փութասջիր զանձն
քո ընտիր կացուցանել առաջի Աս-
տուծոյ, մշակ առանց ամօթոյ, ուղիղ
հատմառօտել զբանն ճշմարտութեան։
16 Այլ ի պղծոց եւ ի սնոտի խօսից մեր-
ժեսջիր, զի առաւել յառաջ դայցեն
17 յամբարշտութիւնս. Եւ բանք նոցա
իբրեւ զքաղցկեղ ճարակ գտանեն. ո-
րոց սակի են Հիմենոս եւ Փիղետոս.
18 Որք վրիպեցան ի ճշմարտութենէ, եւ
ասեն եթէ Յարութիւն [4]մեռելոց արդէն
իսկ եղեալ է, եւ կործանեն զհաւատս
19 ոմանց։ Այլ հաստատուն հիմն Աս-
տուծոյ կայ եւ ունի զկնիքս զայս, թէ
Ծանեաւ Տէր զայնոսիկ որ իւրն են.
եւ՝ Ի բաց լիցի յանիրաւութենէ ամե-
նայն որ անուանէ զանուն [5]Տեառն։
20 Այլ ի տան մեծի ոչ միայն են անօթք
ոսկեղէնք եւ արծաթեղէնք, այլ եւ
փայտեղէնք եւ խեցեղէնք. են որ ի
պատուի են եւ են որ յանարգութեան։
21 Եթէ ոք սրբեսցէ զանձն իւր յայնպիս-
եաց անտի, եղիցի անօթ պատուական՝
սրբեալ եւ պիտանի Տեառն [4]իւրում՝
յամենայն գործս բարութեան պատ-
22 րաստեալ։ Այլ յերիտասարդական ցան-
կութեանց փախիր, եւ երթ զհետ ար-
դարութեան, զհաւատոց, զսիրոյ,
զխաղաղութեան, [4]զսրբութեան, ընդ
այնոսիկ որ կարդան զանուն Տեառն
23 սուրբ սրտիւք։ Այլ ի յիմար եւ յան-
խրատ խնդրոց հրաժարեա, գիտասջիր
24 թէ անտի ծնանին կռիւք. Բայց ծա-
ռայի Տեառն ոչ է պարտ կռուել, այլ
հեզ լինել առ ամենեսեան, ուսուցիչ,
25 անոխակալ. Հանդարտութեամբ խրա-
տել զհակառակորդսն, թերեւս տացէ

[1] Ի Բազումս պակասէ

[2] Յոյնն, յաւիտենական
[3] Ոմանք, Տեառն
[4] Ի Յոյնն պակասէ
[5] Ոմանք, Քրիստոսի

նոցա Աստուած ապաշխարութիւն ի
26 գիտութիւն ճշմարտութեան. Եւ սթա-
փեսցին յորոգայթից Սատանայի՝ որ-
սացեալք ի նմանէ ի նորա կամն։

Գլ. Գ

1 ԿԻՐ. Զայս գիտասջիր եթէ յաւուրս
յետինս եկեսցեն ժամանակք չարք.
2 Զի եղիցին մարդիկ անձնասէրք, ար-
ծաթասէրք, հպարտք, ամբարտաւանք,
հայհոյիչք, . անհաւանք ծնողաց, ան-
3 շնորհք, անսուրբք, Աննուէրք, ան-
գութք, բանսարկուք, անժոյժք, վէսք,
4 անբարեսէրք, Մատնիչք, յանդգունք,
ամբարհաւաճք, ցանկասէրք մանա-
5 ւանդ քան աստուածասէրք. Որ ունի-
ցին զկերպարանս աստուածպաշտու-
թեան, եւ ի զօրութենէ անտի նորա
ուրացեալ իցեն. եւ խորշեսջիր ի նո-
6 ցանէ։ Քանզի ի նոցանէ են որ մտա-
նեն տանէ ի տուն, եւ գերեն զկանայս
չեղջակուտեալս մեղօք՝ վարեալս ի
7 պէսպէս ցանկութիւնս, Որ յամենայն
ժամ ուսանին, եւ երբեք ի գիտու-
թիւն ճշմարտութեան ոչ հասանեն։
8 Այլ որպէս Յանէսն եւ Յամրէս հա-
կառակ կացին Մովսիսի, նոյնպէս եւ
սոքա հակառակ կան ճշմարտութեանն.
մարդք ապականեալք մտօք՝ անպի-
9 տանք ի հաւատս։ Այլ ոչ երբեք դայ-
ցեն յառաջ ի լաւ անդր. քանզի ան-
մտութիւն սոցա յայտնի լիցի ամենե-
ցուն, որպէս եւ նոցայն իսկ եղեւ։
10 Այլ դու զհետ եկիր վարդապետութեան
իմոյ, առաջնորդութեան, յօժարու-
թեան, հաւատոց, երկայնմտութեան,
11 սիրոյ, համբերութեան, Հալածանաց,
չարչարանաց, որպիսիք եղեն ինձ յԱն-
տիոք եւ յԻկոնիոն եւ ի Լիւստրոս,
որպիսի՛ հալածանաց համբերի, եւ յա-
12 մենայնէ փրկեաց զիս Տէր։ Եւ ամե-
նեքին որ կամիցին աստուածպաշտու-
թեամբ կեալ ի Քրիստոս Յիսուս՝ ի
13 հալածանս կացցեն։ Այլ մարդք չարք
եւ կախարդք յառաջ եկեսցեն ի չար
անդր. մոլորեալք եւ մոլորեցուցա-
14 նիցեն։ Այլ դու հաստատուն կաց յոր
ուսարդ եւ հաւատարիմ եղեր, գիտես
15 ուստի ուսար. Զի ի մանկութենէ
զգիրս սուրբս գիտես, որ կարող են
իմաստուն առնել զքեզ ի փրկութիւն
ի ձեռն հաւատոցն որ ի Քրիստոս Յի-
սուս։
16 ԴՇ. Ամենայն Գիրք աստուածա-
շունչք եւ օգտակարք ի վարդապետու-
թիւն են եւ ի յանդիմանութիւն եւ
յուղղութիւն եւ ի խրատ արդարու-
17 թեան. Զի կատարեալ իցէ մարդն Աս-
տուծոյ յամենայն գործս բարութեան
հաստատեալ։

Գլ. Դ

1 Զայս վկայութիւն դնեմ առաջի Աս-
տուծոյ եւ Յիսուսի Քրիստոսի, որ
դատելոց է զկենդանիս եւ զմեռեալս
ի յայտնութեան իւրում եւ յարքայու-
2 թեան. [1]Եւ դու՝՝ քարոզեա զբանն,
հաս ի վերայ ժամու եւ տարաժամու,
յանդիմանեա, սաստեա, մխիթարեա
ամենայն երկայնմտութեամբ եւ վար-
3 դապետութեամբ։ Քանզի եկեսցէ ժա-
մանակ զի ողջմտութեան վարդապե-
տութեանն ոչ անսայցեն, այլ ըստ
իւրաքանչիւր ցանկութեանց կուտեսս-
ցեն իւրեանց վարդապետս, ըստ մար-
4 մաջելոյ լսելեաց իւրեանց. Եւ ի ճըշ-
մարտութենէ անտի դարձուցանիցեն
զլսելիս, եւ յառասպելս կործանեսցին.
5 Այլ դու զուարթ կաց յամենայնի,
ճգնեաց, զգործս աւետարանչի գոր-
ծեա, զպաշտօնդ քո կատարեալ կալ։
6 Զի ես այսուհետեւ նուիրեալ եմ, եւ
ժամանակ դարձի իմոյ հասեալ կայ։
7 Զբարւոք պատերազմ պատերազմեցայ,
զընթացսն կատարեցի, զհաւատսն պա-
8 հեցի։ Այսուհետեւ կայ մնայ ինձ ար-
դարութեան պսակն, զոր հատուսցէ
ինձ Տէր յաւուր յայնմիկ արդարն Դա-
տաւոր, ոչ միայն ինձ, այլ եւ ամե-
նեցուն որ սիրեցին զյայտնութիւն
նորա։
9 ԶՇ. Փութասջիր գալ առ իս վաղվա-
ղակի. զի Դեմաս եթող զիս եւ սիր-
եաց զաշխարհ, եւ գնաց ի Թեսաղո-
10 նիկէ. Կրեսկէս՝ [2]ի Գաղիլեա, Տիտոս՝
ի Դաղմատիա. Ղուկաս միայն է ընդ
11 իս։ ԶՄարկոս առեալ՝ ընդ քեզ ածի-
ցես, զի է ինձ պիտանի ի սպասա-
12 ւորութիւն։ ԶՏիւքիկոս առաքեցի

[1] ի Յունէն պակասէ
[2] ի Յունէն, Բազումք՝ ի Գաղատիա, այլոք՝ ի Գաղիա

13 յԵփեսոս։ Զփիլոնն [1]թողի ի Տրովադա
առ Կարպոսի, յորժամ գայցես, բե-
րջիր, եւ զգիրսն, մանաւանդ զմաղ-
14 եանսն։ [2]Աղեքսանդրոս բազում չար-
չարանս եցոյց ինձ. հատուսցէ նմա
15 Տէր ըստ գործս նորա։ Յորմէ եւ
դու անձնապահ լինիջիր, զի չափ
16 հակառակ եկաց բանից մերոց։ Յա-
ռաջնում ատենին ոչ ոք ինձ ի թի-
կունս եկաց, այլ ամենեքին թողին
17 զիս. մի՛ համարեսցի նոցա այն։ Այլ
Տէր օգնեաց ինձ, եւ զօրացոյց զիս,
զի ինեւ քարոզութիւնն հաստատես-
ցի, եւ լուիցեն ամենայն հեթանոսք.
եւ ապրեցայ ես ի բերանոյ առիւծուն։
18 Փրկեսցէ զիս Տէր յամենայն գործոց
չարաց, եւ զերծուսցէ զիս յարքայու-
թիւն իւր որ յերկինս է, որում փառք
յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։
19 Ողջոյն տաջիր Պրիսկեայ եւ Ակիւ-
20 ղեայ եւ Ոնեսիփորայ տանն։ Երաս-
տոս մնաց ի Կորնթոս. զՏրոփիմոս
21 թողի ի Մեղիտոս հիւանդացեալ։ Փու-
թասջիր յառաջ քան զձմեռն գալ։
Ողջոյն տան քեզ Եբուղոս եւ Պուդէս
եւ Ղինոս եւ Կղաւդիա եւ եղբարք
22 ամենեքեան։ Տէր Յիսուս Քրիստոս
ընդ ոգւոյդ քում։ Շնորհք ընդ քեզ։[3]

Առ Տիմոթէոս երկրորդ թուղթ, որ էր Եփեսացւոց եկեղեցւոյն եպիսկոպոս առաջին յեռնադրեալ, գրեցաւ ի Հռոմէ, յորժամ երկրորդ անգամ եկաց յատենի Պաւղոս առաջի Ներոնի կայսեր Հռովմայ։

# ԱՌ ՏԻՏՈՍ

## ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 ԿԻՐ. ՊԱՒՂՈՍ, ծառայ Աստուծոյ եւ
առաքեալ Յիսուսի Քրիստոսի, ըստ
հաւատոց ընտրելոցն Աստուծոյ, եւ
ի գիտութիւն ճշմարտութեան որ ընդ
2 աստուածպաշտութեանն է, Յուսով
կենացն յաւիտենից, զոր խոստացաւ
անսուտն Աստուած յառաջ քան զժա-
3 մանակս յաւիտենից, Բայց յայտնեաց
իւրովք ժամանակօք զբանն իւր քա-
րոզութեամբ, որոյ եղէ ես հաւատա-
րիմ ըստ հրամանի Փրկչին մերոյ Աս-
4 տուծոյ, Տիտոսի որդւոյ սիրելւոյ ըստ
հասարակաց հաւատոց, շնորհք եւ
խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ եւ
[4]ի Քրիստոսէ Յիսուսէ՝ Փրկչէ մերմէ։
5 Վասն այնորիկ իսկ թողի զքեզ ի
Կրետէ, զի որ ինչ միանգամ պակաս
իցէ՝ ուղղեսցես, եւ կացուսցես ըստ
քաղաքաց երիցունս, որպէս եւ ես
6 քեզ պատուիրեցի. Եթէ ոք անարատ
իցէ, միոյ կնոջ այր, որդեակս ունիցի
հաւատացեալս, եւ ոչ յամբաստանու-
թիւն անառակութեան կամ անհնա-
7 զանդս։ Զի պարտ է եպիսկոպոսին
անարատ լինել, որպէս եւ Աստուծոյ
տնտեսի. մի՛ յանդուգն, մի՛ բարկա-
ցող, մի՛ թշնամանող, մի՛ հարկանող,
8 մի՛ ղօշաքաղ, Այլ հիւրասէր, բարե-
սէր, ցած, արդար, սուրբ, ժուժկալ,
9 Վերակացու լինել հաւատարիմ բանին
վարդապետութեան, զի կարող իցէ
եւ մխիթարել ողջմտութեամբ վար-
դապետութեանն, եւ զհակառակորդսն
10 կշտամբել։ Քանզի բազումք են ան-
հնազանդք, զրախօսք եւ մտախաբք,
մանաւանդ որ ի թլփատութենէ անտի

[1]Յոյնն, զոր Թողի
[2]Յոյնն, Աղեքսանդրոս դարբին
[3]Ոմանք յաւելուն, Ամէն։
[4]Ոմանք, ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ

11 են . Զորս պարտ է ըմբերանել որք
զամենայն տունս կործանեն , եւ ու-
սուցանեն զոր չէ արժան, վասն զօշա-
քաղութեան ։
12 ԴՇ. Ասաց ոմն ի նոցանէ , իւրեանց
իսկ մարգարէ , Կրետացիք հանապա-
զստուք , չարագազանք , դատարկա-
13 պորտք ։ Եւ ստոյգ է վկայութիւնս
այս . վասն որոյ կշտամբեսցես զնոսա
խստագոյնս , զի առողջասցին ի հա-
14 ւատս . Եւ մի՛ հայեսցին ի Հրէական
առասպելս , եւ ի պատուէրս մարդ-
կան զառածելոցն ի ճշմարտութենէ ։
15 Ամենայն ինչ սուրբ է սրբոց , բայց
պղծոցն եւ անհաւատից ոչինչ է սուրբ ,
այլ պղծեալ են միտք եւ խորհուրդք
16 նոցա ։ Խոստանան գիտել զԱստուած ,
եւ գործովք իւրեանց ուրանան. պիղծք
եւ անհաւանք եւ յամենայն գործս
բարեաց անպիտանք ։

## Գլ. Բ

1 Այլ դու խօսեաց որ ինչ վայելէ ող-
2 ջամիտ վարդապետութեանց . Ծերոց
զգաստս լինել, պարկեշտս , ցածունս ,
ողջամիտս ի հաւատս, ի սէր , ի համ-
բերութեան , [1]ի ժուժկալութեան ։
3 Պառաւանց նոյնպէս ի զգաստութեան,
ի սուրբ վայելչութեան , մի՛ բանսար-
կուս , մի՛ գինեմոլս, այլ բարեխրատս .
4 Զի զգաստացուսցեն զմանկամարդսն
5 այրասէրս լինել , որդեսէրս , Ցածունս,
սուրբս , տնարարս , բարեգործս , հնա-
զանդս իւրեանց արանց . զի մի՛ բանն
Աստուծոյ [2]եւ վարդապետութիւնն"
6 հայհոյեսցի ։ Զերիտասարդս նոյնպէս
7 աղաչեսջիր ցածունս լինել . [3]Ամենե-
ցուն զանձն" օրինակ կացուցանել գոր-
ծոց բարութեան , վարդապետութեամբ
զանեղծութիւն ունել , [2]զսրբութիւն,
8 զպարկեշտութիւն , Զբանն ողջմտու-
թեան , անպարսաւ լինել , զի որ
հակառակորդն իցէ՝ յամօթ լիցի , եւ
մի՛ ինչ ունիցի ասել զմէնջ չարու-
9 թիւն ։ Ծառայից՝ իւրեանց տերանց
հնազանդ լինել եւ հաճոյս յամենայնի .
10 մի՛ հակառակօղս , Մի՛ հատուս , այլ
զամենայն հաւատս ցուցանել բարու-
թեամբ . զի զվարդապետութիւն Փրկ-
չին մերոյ Աստուծոյ զարդարեսցեն
յամենայնի ։ ՎԶ
11 Քանզի երեւեցաւ շնորհն Աստուծոյ
12 փրկիչ ամենայն մարդկան . Որ խրա-
տէն զմեզ զի ուրասցուք զամբարըշ-
տութիւն եւ զաշխարհական ցանկու-
թիւնս , զգաստութեամբ եւ արդարու-
թեամբ եւ աստուածպաշտութեամբ
13 կեցցուք յաշխարհիս , Եւ ակնկալցուք
երանելի յուսոյն , եւ յայտնութեան
փառաց մեծին Աստուծոյ եւ Փրկչին
14 մերոյ Յիսուսի Քրիստոսի . Որ ետ
զանձն վասն մեր , զի փրկեսցէ զմեզ
յամենայն անօրէնութենէ , եւ սրբես-
ցէ իւր ժողովուրդ սեպհական , նա-
15 խանձաւոր գործոց բարութեան ։ Զայդ
խօսեաց եւ մխիթարեա եւ յանդիմա-
նեա ամենայն սաստիւք , զի մի՛ ոք
իցէ որ զքեզ արհամարհիցէ ։

## Գլ. Գ

1 ԶՇ. Եւ յուշ արասջիր նոցա , իշխա-
նութեանց եւ պետութեանց հնազանդ
լինել եւ հպատակ կալ , եւ ամենայն
գործոց բարութեան պատրաստ գտա-
2 նել . Մի՛ զոք հայհոյել , անկռիւս լի-
նել , հեզս, զամենայն ցածութիւն առ
3 ամենայն մարդիկ ցուցանել ։ Զի էաք
երբեմն եւ մեք անմիտք , անհաւանք ,
մոլորեալք , ծառայեալք ցանկութեանց
եւ պէսպէս անառակութեանց . չա-
րութեամբ եւ նախանձու շրջէաք , ա-
4 տելեալք՝ եւ զմիմեանս ատեաք ։ Իսկ
յորժամ քաղցրութիւն եւ մարդասի-
րութիւն Փրկչին մերոյ Աստուծոյ
5 յայտնեցաւ , Ոչ ի գործոց արդարու-
թեան զոր արարաք մեք , այլ ըստ իւ-
րում ողորմութեան ապրեցոյց զմեզ
ի ձեռն աւազանին միւսանգամ ծնըն-
դեանն , եւ նորոգութեամբ Հոգւոյն
6 Սրբոյ, Զոր եհեղ ի մեզ առատութեամբ
ի ձեռն Յիսուսի Քրիստոսի Փրկչին
7 մերոյ , Զի արդարացեալք շնորհօքն՝
եղիցուք ժառանգաւորք յուսով կե-
8 նացն յաւիտենականաց ։ Հաւատարիմ
է բանս . եւ ի սոյն կամիմ զքեզ հաս-
տատուն լինել , զի փոյթ արասցեն
գործոց բարեաց վերակացու լինել
հաւատացեալքն յԱստուած , զի այն է
9 բարի եւ օգտակար մարդկան ։ Այլ

[1]Ի Յունէն պակասէ
[2]Ի բազումս պակասէ
[3]Յոյնն, Յամենայնի զանձն քո

զյիմարութեան խնդիրս եւ զառհմա-
թիւս եւ զհեռ եւ զօրինական կռիւսն
ի բաց մերժեսջիր. զի անօգուտք են
10 եւ ունայնք։ Յառնէ հերձուածողէ,
յետ մի անգամ եւ երկիցս խրատելոյ,
11 հրաժարեսջիր. Գիտասջիր զի թիւր-
եալ է այնպիսին, եւ մեղանչէ՝ ան-
ձամբ զանձն դատապարտեալ։
12 Այլ յորժամ յղեցից առ քեզ զԱրտե-
մա կամ զՏիւքիկոս, փութասջիր գալ
առ իս ի Նիկոպոլիս, զի անդ եղի ի
13 մտի ձմերել։ Եւ զԶենոն զօրինական
զդպիր եւ զԱպողոս փութով արձակե-
սջիր, զի մի՛ ինչ պակասիցէ նոցա։
14 Ուսցին եւ մերքն եւս բարեաց գոր-
ծոյ վերակացու լինել ի պէտս կարե-
15 ւորս, զի մի՛ անպտուղք լինիցին։ Ող-
ջոյն տան քեզ որ ընդ իս են ամենե-
քին. ողջոյն տուր սիրելեաց մերոց
հաւատովք. շնորհք ընդ ձեզ ամենե-
սին։[1]

Առ Տիտոս, Կրետացւոց եկեղեցւոյն առա-
ջին յեռանորդեալ եպիսկոպոս, գրեցաւ ի Նի-
կոպոլէ Մակեդոնացւոց։

# [2]ԱՌ ՓԻԼԻՄՈՎՆ

## ԵՒ ԱՌ ԱՐՔԻՊՊՈՍ ՍԱՐԿԱՒԱԳ ԵՒ ԱՌ ԱՊՓԻԱ

## ԹՈՒՂԹ՚՚

1 ՊԱՒՂՈՍ, կապեալ Յիսուսի Քրիս-
տոսի, եւ Տիմոթէոս եղբայր, Փիլի-
մոնի սիրելւոյ եւ գործակցի մերոյ,
2 Եւ Ապփեայ [3]քեռ, եւ Արքիպպեայ
զինուորակցի մերոյ, եւ տանն ե-
3 կեղեցւոյդ. Շնորհք ընդ ձեզ եւ խա-
ղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ
եւ ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ։
4 Գոհանամ զԱստուծոյ իմոյ յամե-
նայն ժամ յիշատակեալ յաղօթս իմ
5 վասն քո, Իբրեւ լսեմ զքո հաւատն
եւ զսէր զոր ունիս առ Տէր Յիսուս
6 եւ առ ամենայն սուրբս, Զի հաղոր-
դութիւն հաւատոցն քոց արդոյ լինի-
ցի գիտութեամբ ամենայն բարու-
թեան որ ի ձեզ է ի Քրիստոս Յիսուս։
7 Խնդութիւն յոյժ ընկալայ եւ մխիթա-
րութիւն ի վերայ սիրոյն քո, զի
գութք սրբոց քեւ հանգուցեալ են,
եղբայր։

8 Վասն որոյ բազում համարձակու-
թիւն ունիմ ի Քրիստոս՝ հրաման տալ
9 քեզ զարժանն, Վասն սիրոյ մանա-
ւանդ թէ աղաչեմ իսկ, այնպիսի լի-
նել որպէս ես Պաւղոս ծերացեալ, արդ
եւ կապեալ եւս Յիսուսի Քրիստոսի։
10 Աղաչեմ զքեզ վասն որդւոյ իմոյ զոր
11 ծնայ ի կապանս իմ, զՈնեսիմոս. Որ
երբեմն անպիտան էր քեզ, բայց արդ
12 քեզ եւ ինձ պիտանի. Զոր յղեցի առ
քեզ. եւ դու զդա ընկալջիր, այսինքն
13 է զիմ աղիս. Զոր կամէի առ իս ար-
գելուլ, զի ընդ քո ունիցի ինձ սպաս
14 ի կապանս աւետարանին, Բայց ա-
ռանց քո կամաց ոչինչ կամեցայ առ-
նել, զի մի՛ բարիքդ քո ի հարկէ լի-
15 նիցին, այլ կամաւ։ Եւ թերեւս վասն
այնորիկ մեկնեցաւ առ ժամանակ մի,
16 զի յաւիտեան ունիցիս զդա, Մի՛ եւս
իբրեւ զծառայ, այլ ի վեր քան զծա-
ռայ, իբրեւ զեղբայր սիրելի. եթէ ինձ
այսպէս, ո՞րչափ եւս առաւել քեզ
17 մարմնով եւ Տերամբ։ Եթէ զիս քեզ
հաղորդ համարիցիս, ընկալ զդա իբ-
18 րեւ զիս։ Եւ եթէ յանցուցեալ ինչ իցէ

[1] Օրին+ յաւելուն, Ամէն։
[2] Օրին+ ըն. Առ Փիլիմոն, այլ՝ Թուղթ Պաւ-
ղոսի առաքելոյ առ Փիլիմոն
[3] Օրին+, սիրելւոյ

կամ պարտիցի, զայն ինձ համարեաց։
19 Ես Պաւղոս գրեցի իմով ձեռամբ, ես
հատուցից. զի մի՛ ասիցեմ քեզ թէ եւ
20 դու զանձն քո ինձ պարտիս։ Այո,
եղբայր, [1]ես քո փոխանակ եղէց՟ ի
Տէր. հանգո զաղիս իմ ի Քրիստոս։
21 Յուսացեալ ի հնազանդութիւնդ քո
գրեցի առ քեզ, քանզի գիտեմ թէ ա-
ռաւել եւս քան զոր ասեմդ՝ առնիցես։
22 Միանգամայն եւ պատրաստեսջիր
ինձ վանս, քանզի յուսամ եթէ աղօ-
23 թիւք ձերովք շնորհեսցայց ձեզ։ Ողջոյն
տայ ձեզ Եպափրաս գերեկից իմ ի
24 Քրիստոս Յիսուս, Եւ Մարկոս եւ Ա-
րիստարքոս եւ Դեմաս եւ Ղուկաս՝
25 գործակիցք իմ։ Շնորհք Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի ընդ ոգւոյդ ձե-
րում։[2]

Առ Փիլիմոն և Ապփիա, տեառն Օնեսիմոսի, և առ Արքիպպոս, սարկաւագ Կողոսացւոց եկեղեցւոյն, գրեցաւ ի Հռոմէ ի ձեռն Օնեսիմոսի ծառայի։

# ԱՌ ԵԲՐԱՅԵՑԻՍ

## ԹՈՒՂԹ

### ԳԼՈՒԽ Ա

1 ԵԿ. ԲԱԶՈՒՄ մասամբք եւ բազում
օրինակօք կանխաւ խօսեցաւ Աստուած
2 ընդ հարսն [3]մեր մարգարէիւք. Ի վախ-
ճան աւուրցս այսոցիկ խօսեցաւ ընդ
մեզ Որդւովն զոր եդ ժառանգ ամե-
նայնի, որով եւ զյաւիտեանսն արար.
3 Որ է լոյս փառաց եւ նկարագիր էու-
թեան նորա, որ կրէ զամենայն բա-
նիւ զօրութեան իւրոյ, [4]սրբութիւն
մեղաց մերոց արարեալ՝ նստաւ ընդ
4 աջմէ Մեծութեանն ի բարձունս։ Այն-
չափ առաւել եղեալ քան զհրեշտակս,
որչափ լաւ եւս քան զնոսա անուն
5 ժառանգեաց։ Քանզի ցո՞ երբեք ասաց
ի հրեշտակաց, Որդի իմ ես դու, ես
այսօր ծնայ զքեզ. եւ դարձեալ թէ
Ես եղէց նմա ի Հայր, եւ նա եղիցի
6 ինձ յՈրդի։ Այլ յորժամ միւսանգամ
մուծցէ զանդրանիկն յաշխարհ, ասէ,
Երկիր պագցեն նմա ամենայն հրեշ-
7 տակք Աստուծոյ։ Այլ [5]առ հրեշտակսն՟
ասէ, Ո արար զհրեշտակս իւր հոգիս,
8 եւ զպաշտօնեայս իւր՝ բոց հրոյ։ Իսկ
ցՈրդին [6]ասէ, Աթոռ քո, Աստուած,
յաւիտեանս յաւիտենից. գաւազան
ուղղութեան՝ գաւազան արքայու-
9 թեան քո։ Սիրեցեր զարդարութիւն եւ
ատեցեր զանօրէնութիւն. վասն այսո-
րիկ օծ զքեզ, Աստուած, Աստուած քո
իւղով ուրախութեան առաւել քան
10 զընկերս քո։ Եւ, Դու, Տէր, ի սկզբա-
նէ զերկիր հաստատեցեր, եւ գործք
11 ձեռաց քոց երկինք են։ Նոքա կորնչին,
եւ դու կաս եւ մնաս. ամենեքեան
12 իբրեւ զձորձս մաշեսցին, Եւ իբրեւ
զվերարկու [7]զալարեսցես զնոսա՝ [8]իբ-
րեւ զհանդերձ՟, եւ [9]զալարեսցին. բայց
դու նոյն իսկ ես, եւ ամք քո ոչ պա-
13 կասեսցեն։ Ցո՞ երբեք ասաց ի հրեշ-
տակաց, Նիստ ընդ աջմէ իմմէ, մին-
չեւ եդից զթշնամիս քո պատուանդան
14 ոտից քոց։ Ո՞չ ապաքէն ամենեքեան

[1] Յոյնն, օգտեցայց, կամ, ուրախ եղէց քեւ
[2] Ոմանք յաւելուն, Ամէն։
[3] Ի բազումս պակասէ
[4] Ոմանք, անձամբ սրբութիւն

[5] կամ, զհրեշտակաց
[6] Ի Յոյնին պակասէ
[7] Ոմանք, փոխեսցես
[8] Յոմանս պակասէ
[9] Յոյնն, փոխեսցին

հոգիք են հարկաւորք որ առաքին ի
սպասաւորութիւն վասն այնոցիկ որ
ժառանգելոցն են զփրկութիւն ։

Գլ․ Բ

1 ԵԴ․ Վասն այնորիկ պարտ է մեզ ա-
ռաւել եւս ունկնդիր լինել բանիցն
ասացելոց, զի մի՛ երբեք նուազես-
2 ցուք ։ Զի եթէ որ ի ձեռն հրեշտակաց
խօսեցաւ բանն՝ հաստատուն եղեւ,
եւ ամենայն յանցաւորութիւն եւ ան-
հնազանդութիւն ընկալաւ զպատիժ
3 պատուհասի, Մեք զիա՞րդ ապրեսցուք
հեզգացեալք յայնպիսի փրկութենէ,
որ սկիզբն ա՛ռ խօսելոյ ի Տեառնէ, եւ
ի ձեռն այնոցիկ որ լուանն՝ ի մեզ հաս-
4 տատեցաւ․ Վկայեալ յԱստուծոյ նշա-
նօք եւ արուեստիւք եւ պէսպէս զօ-
րութեամբք եւ մասամբք Հոգւոյն
Սրբոյ ըստ իւրոց կամաց ։
5 Զի ոչ եթէ հրեշտակաց հնազանդե-
ցոյց զհանդերձեալ աշխարհն, վասն
6 որոյ մեքս խօսիմք ։ Վկայեաց ոք ու-
րեք եւ ասէ, Զի՞նչ է մարդ եթէ յի-
շեցես զնա, կամ որդի մարդոյ թէ
7 այց արասցես նմա ։ Փոքր մի խոնարհ
արարեր զնա քան զհրեշտակս․ փա-
ռօք եւ պատուով պսակեցեր զնա, եւ
կացուցեր զնա ի վերայ ձեռակերտաց
8 քոց․ Զամենայն ինչ հնազանդ արա-
րեր ի ներքոյ ոտից նորա․ արդ ի հնա-
զանդեցուցանելն զամենայն՝ ոչինչ ե-
թող անհնազանդ ի նմանէ․ բայց այժմ
ոչ եւս տեսանեմք հնազանդեալ նմա
9 զամենայն ։ Այլ զփոքր մի խոնարհեալ
քան զհրեշտակս տեսանեմք զՅիսուս
վասն չարչարանաց մահուն, փառօք
եւ պատուով պսակեալ, զի շնորհօքն
Աստուծոյ վասն ամենեցուն զմահ ճա-
10 շակեսցէ ։ Զի վայել էր իսկ նմա (վասն
որոյ ամենայն եւ որով ամենայն) բա-
զում որդիս ի փառս ածել՝ զառաջնորդ
փրկութեան նոցա չարչարանօք կա-
տարել ։ ՎԶ
11 Զի որ սրբէն եւ որ սրբին՝ ի միոջէ
[1]էին ամենեքեան, վասն որոյ ոչ ամօթ
համարի եղբարս անուանել զնոսա եւ
12 ասել, Պատմեցից զանուն քո եղբարց
իմոց, ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զքեզ ։
13 Եւ դարձեալ թէ՝ Ես եղէց յուսացեալ
ի նա․ եւ դարձեալ՝ Ահաւասիկ ես եւ
մանկունք [2]իմ, զոր ետ ինձ Աստուած ։
14 Արդ որովհետեւ մանկունք հաղորդե-
ցին արեան եւ մարմնոյ, եւ ինքն իսկ
մերձաւորութեամբ կցորդ եղեւ նո-
ցունց, զի մահուն [2]իւրով խափանես-
ցէ զայն որ զիշխանութիւն մահուն
15 ունէր, այսինքն է՝ զՍատանայ․ Եւ
ապրեցուսցէ զայնոսիկ որ մահուն եր-
կիւղիւ հանապազ կէին վտարանդեալք
16 ի ծառայութիւն ։ Քանզի ոչ երբեք
զհրեշտակաց բուռն հարկանէ, այլ զզա-
ւակէն Աբրահամու բուռն հարկանէ ։
17 Ուստի պարտ իսկ էր նմա ամենայ-
նիւ եղբարց նմանել, զի ողորմած լի-
նիցի եւ հաւատարիմ քահանայապետ
յաստուածակողմն կողմանէ անտի, ու
18 ի քաւելոյ զմեղս ժողովրդեանն ։ Զի
որով ինքն չարչարեցաւ զփորձ առեալ՝
կարող է եւ փորձանաւորացն օգնա-
կան լինել ։

Գլ․ Գ

1 Ուստի, եղբարք սուրբք, երկնաւոր
կոչմանն բաժանորդք, նայեցարուք
ընդ Առաքեալն եւ ընդ Քահանայապետ
խոստովանութեան մերոյ ընդ Յիսուս
2 [3]Քրիստոս․ Որ հաւատարիմ է արար-
չին իւրոյ, որպէս եւ Մովսէս յամե-
3 նայն տան նորա ։ Զի առաւել եւս
փառաց քան զՄովսէս արժանի եղեւ,
որչափ առաւել պատիւ ունիցի քան
4 զտունն՝ տանն առնելի ։ Զի ամենայն
տուն կազմի յումէք կազմի․ իսկ որ
5 զամենայնն արար՝ Աստուած է ։ Մով-
սէս հաւատարիմ է յամենայն տան
նորա իբրեւ զծառայ առ ի վկայութե-
6 նէ բանից ասացելոց․ Այլ Քրիստոս
իբրեւ որդի ի վերայ տան իւրոյ․ որոյ
տունն մեք իսկ եմք, միայն թէ զհա-
մարձակութիւն եւ զպարծանս յուսոյն
մինչեւ ի վախճան հաստատուն ունի-
ցիմք ։
7 Վասն որոյ այսպէս ասէ Հոգին
Սուրբ, Այսօր եթէ ձայնի նորա լուի-
8 ցէք, Մի՛ խստացուցանէք զսիրտս ձեր
իբրեւ ի դառնութեանն՝ յաւուրն փոր-
9 ձութեան յանապատի, Ուր փորձեցին

---

[1]կամ, են

[2]ի Յոմանսն պակասէ [3]Յոմանս պակասէ

զիս հարքն ձեր, քննեցին զիս եւ տե-
10 սին զգործս իմ զքառասուն ամ. Վասն
որոյ տաղտկացայ ազգաւն այնուիկ,
եւ ասացի, Միշտ մոլորեալ են սրտիւք,
եւ նոքա ոչ ծանեան զճանապարհս
11 իմ. Որպէս երդուայ ի բարկութեան
իմում թէ Մտցեն ի հանգիստ իմ:
12 ԵՁ. Տեսէք, եղբարք, գուցէ երբեք
լինիցի յումեք ի ձէնջ սիրտ չար ան-
հաւատութեան՝ ապստամբ լինել յԱս-
13 տուծոյ կենդանւոյ: Այլ մխիթարեցէք
զմիմեանս զօրհանապազ՝ մինչդեռ [1]այ-
սօրդ առաջի կայ", զի մի՛ ոք խստասցի
14 ի ձէնջ խաբէութեամբ մեղաց: Քանզի
բաժանորդք եղեաք Քրիստոսի, միայն
թէ զսկիզբն հաստատութեանն մինչեւ
15 ի վախճան պինդ կալցուք. Յասելն,
Այսօր եթէ ձայնի նորա լուիցէք, մի՛
խստացուցանէք զսիրտս ձեր իբրեւ ի
16 դառնութեանն: Քանզի [2]ոմանք լուան
եւ դառնացուցին, այլ ոչ ամենեքեան
որ" ելեալ էին յԵգիպտոսէ ի ձեռն
17 Մովսիսի: Յումէ՞ տաղտկացաւ զքա-
ռասուն ամն. ո՞չ ապաքէն ի յանցու-
ցելոցն, որոց ոսկերքն անկան յանա-
18 պատի անդ: Ո՞ւմ երդուաւ չմտանել
ի հանգիստն իւր, եթէ ոչ՝ անհաւա-
19 տիցն: Եւ տեսանեմք զի ոչ կարացին
մտանել վասն անհաւատութեանն:

ԳԼ. Դ

1 Երկիցուք այսուհետեւ, [3]գուցէ ի թո-
ղուլ զաւետիսն՝ ի մտանելոյ" ի հան-
գիստ նորա, գտանիցի ոք ի ձէնջ
2 նուազեալ: Քանզի եմք աւետարան-
եալք որպէս եւ նոքայն. այլ նոցա
ոչինչ օգնեաց լուր բանին, [4]չամոքե-
լոցն ի հնազանդութիւն հաւատոց":
3 Այլ մեք մտանեմք ի հանգիստն որք
հաւատացաքս. որպէս եւ ասացն թէ
Որպէս երդուայ ի բարկութեան իմում,
թէ Մտցեն ի հանգիստ իմ. թէպէտ
եւ արդիւնքն ի սկզբանէ աշխարհի
4 լեալ էին: Քանզի ասէ ուրեք վասն
աւուրն եւթներորդի այսպէս. Եւ
հանգեաւ Աստուած յաւուրն եւթնե-
5 րորդի յամենայն գործոց իւրոց: Եւ
աստ դարձեալ ասէ թէ Մտցեն ի հան-
6 գիստ իմ: Եւ արդ՝ [5]քանզի արդեյան
ոմանք մտանել" ի նա, եւ որք յառա-
ջագոյն աւետարանեալն էին՝ չմտին
7 վասն անհաւանութեանն: Դարձեալ
այլ օր սահմանէ, զԱյսօրն ի Դաւթի
եւ ասէ յետ այնչափ ժամանակաց,
որպէս յառաջագոյնն ասաց, Այսօր
եթէ ձայնի նորա լուիցէք, մի՛ խստա-
8 ցուցանէք զսիրտս ձեր: Զի եթէ զնո-
սա Յեսուայ հանգուցեալ էր, ապա
վասն այլոյ աւուր ոչ խօսէր յետ այ-
9 նորիկ: Արդ ուրեմն [6]նուազեալ է"
շաբաթումն ժողովրդեանն Աստուծոյ:
10 Զի որ եմուտ ի հանգիստն նորա, եւ
նա հանգեաւ յիւրոց գործոց անտի,
որպէս եւ Աստուած յիւրայոցն: ԿՁ
11 Փութասցուք այսուհետեւ մտանել
յայն հանգիստ, զի մի՛ ոք ընդ նոյն
օրինակաւ անհաւանութեանն անկա-
12 նիցի: Զի կենդանի է բանն Աստուծոյ
եւ ազդող եւ հատու քան զամենայն
սուր երկսայրի, եւ անցանէ մինչեւ
ցորոշումն շնչոյ եւ ոգւոյ եւ յօդից
եւ ուղղոյ, եւ քննիչ է մտաց եւ խոր-
13 հրդոց սրտից. Եւ չիք արարած աներ-
բեւոյթ յերեսաց նորա, այլ ամենայն
ինչ մերկապարանոց կայ առաջի աչաց
նորա՝ զորմէ մեր բանքս են:
14 Ունիմք այսուհետեւ Քահանայապետ
մեծ անցեալ ընդ երկինս, զՅիսուս
զՈրդին Աստուծոյ, պինդ կալցուք
15 զխոստովանութիւնն: Քանզի ոչ եթէ
ունիմք քահանայապետ որ չիցէ կարող
չարչարակից լինել տկարութեան մե-
րոյ, այլ փորձ է ամենայնիւ ըստ
նմանութեան, առանց մեղաց:
16 ԶԿ. Մատիցուք այսուհետեւ համար-
ձակութեամբ առաջի աթոռոյ շնոր-
հացն [7]նորա, զի ընկալցուք զողոր-
մութիւն եւ գտցուք շնորհս ի դէպ
ժամանակի օգնականութեան:

ԳԼ. Ե

1 Զի ամենայն քահանայապետ ի մարդ-
կանէ առեալ՝ վասն մարդկան կայ

[1] Յոյնն, այսօր կոչի
[2] Կամ, ո՞յք լուան եւ դառնացուցին. ո՞չ ամե-
նեքեան որ
[3] Յոյնն, գուցէ, մինչդեռ կան մնան աւետիքն
մտանելոյ
[4] Կամ, զի ոչ ամոքեցաւ հաւատովք յորս լուանն

[5] Յոյնն, քանզի կայ մնայ ոմանց մտանել
[6] Յոյնն, կայ մնայ [7] Ի Յոյնն պակասէ

յաստուածակոյս կողմն անդր, զի մա-
տուսցէ պատարագս եւ զոհս վասն
2 մեղաց. Զափով չարչարակից կարող
է լինել տգիտաց եւ մոլորելոց, քանզի
եւ ինքն իսկ տկարութեամբ զգածեալ
3 է. Վասն այնորիկ հարկ է որպէս
վասն ժողովրդեանն, նոյնպէս եւ ընդ
անձին մատուցանել պատարագս վասն
4 մեղաց: Եւ ոչ եթէ անձամբ ոք առնու
պատիւ, այլ կոչեցեալն յԱստուծոյ,
5 որպէս եւ Ահարոն: Նոյնպէս եւ Քրիս-
տոս ոչ եթէ անձին ինչ շուք եդ լինել
քահանայապետ, այլ որ խօսեցաւն
առնա՝ թէ Որդի իմ ես դու, ես այս-
6 օր ծնայ զքեզ. Որպէս եւ ի միւսումն
ասէ, Դու ես քահանայ յաւիտեան
7 ըստ կարգին Մելքիսեդեկի: Որ յա-
ւուրս մարմնոյ իւրոյ աղօթս եւ պա-
ղատանս առ այն որ կարողն էր ապ-
րեցուցանել զնա ի մահուանէ՝ ուժգին
գոչմամբ եւ արտասուօք մատուցա-
նէր, եւ լսելի լինէր առ լաւութեանն:
8 Թէպէտ եւ Որդի է, ուսաւ ի չարչա-
9 րանաց անտի զհնազանդութիւն. Եւ
իբրեւ կատարեցաւ, եղեւ ամենայն
հնազանդելոց իւրոց պատճառք փրկու-
10 թեանն յաւիտենից. Եւ անուանեցաւ
յԱստուծոյ քահանայապետ [1]յաւիտե-
նից ըստ կարգին Մելքիսեդեկի:
11 ԶԴ. Վասն որոյ բազումք են մեզ
բանք, եւ դժուարապատում ի մեկնել,
քանզի խօթամիտք եղերուք լսելեօք.
12 Փոխանակ զի պարտ էր ձեզ լինել
վարդապետս վասն ժամանակին, դար-
ձեալ պիտոյ է ձեզ ուսանել թէ զինչ
են նշանագիրք սկզբան բանիցն Աս-
տուծոյ. եւ եղերուք կարօտք կաթին,
13 եւ ոչ հաստատուն կերակրոյ: Զի ա-
մենայն որ կաթնկեր է՝ տղէտ է բա-
նին արդարութեան, քանզի տղայ է:
14 Այլ կատարելոցն է հաստատուն կե-
րակուր, որոց [2]վասն ի չափսն հասա-
նելոյ՝՝ ճաշակելիքն կիրթ են ընտրու-
թեան բարւոյ եւ չարի:

## ԳԼ. Զ

1 Վասն որոյ թողեալ զբան սկզբանն
Քրիստոսի՝ ի կատարումն եկեսցուք.
մի՛ միւսանգամ արկանել հիմն ապաշ-
խարութեան ի մեռելոտի գործոց ան-
2 տի, եւ հաւատոցն որ յԱստուած, Եւ
մկրտութեանցն վարդապետութեան,
եւ ձեռնադրութեան ձեռաց, եւ յա-
րութեան մեռելոց, եւ դատաստանին
3 յաւիտենից: Եւ արդ արասցուք զայն,
4 եթէ Աստուած հրամայեսցէ: Քանզի
անհնար է միանգամ [3]մկրտելոցն որ
ճաշակեցին յերկնաւոր պարգեւացն,
5 եւ հաղորդք եղեն Հոգւոյն Սրբոյ, Եւ
զգեղեցիկ բանին Աստուծոյ ճաշակսն
ճաշակեցին, եւ զզօրութիւնս հան-
6 դերձելոյ աշխարհին, Եւ կործանեա-
ցին, միւսանգամ նորոգել յապաշխա-
րութիւն, եւ վերստին ի խաչ հանել
անձանց զՈրդին Աստուծոյ, եւ դար-
7 ձեալ խայտառակել: Քանզի երկիր որ
ըմպիցէ զանձրեւ բազում անգամ եկ-
եալ ի վերայ նորա, եւ ծնանիցի ար-
դիւնս շայեկանս նոցա վասն որոց գոր-
ծիցին, ընդունի զօրհնութիւն յԱս-
8 տուծոյ. Իսկ որ բերէ փուշ եւ տա-
տասկ, անպիտան է եւ մերձ յանէծս,
եւ վախճան նորա յայրումն:
9 ԶԶ. Բայց հաստատեալ եմ վասն ձեր,
սիրելիք, ի լաւ անդր եւ որ լին է
փրկութեամբ, [4]զի թէպէտ եւ այսպէս
10 խօսիմք: Ոչ եթէ անիրաւ ինչ է Աս-
տուած մոռանալ զգործս ձեր եւ զսէրն
զոր ցուցէք յանուն նորա, զի պաշ-
11 տէիք զսուրբսն եւ պաշտէք: Եւ մեք
ըղձանամք զի իւրաքանչիւր ոք ի ձէնջ
զնոյն փոյթ ցուցանիցէ ի հաստատու-
12 թիւն յուսոյն մինչեւ ցվախճան. Զի
մի՛ հեւանդամիտք լինիցիք, նմանողք
եղերուք այնոցիկ որ հաւատովքն եւ
երկայնմտութեամբ ժառանգեցին զա-
13 ւետիսն: Զի Աբրահամու խոստացեալ
զաւետիսն՝ Աստուծոյ, քանզի յայլ ոք
14 ի մեծ ոչ գոյր երդնուլ, Յանձն իւր
երդուաւ եւ ասէ, Այո, օրհնելով
օրհնեցից զքեզ, եւ բազմացուցանելով
15 բազմացուցից զքեզ: Եւ այնպէս եր-
կայնամիտ եղեալ՝ եհաս աւետեացն:
16 Ապաքէն մարդիկ որ ինչ ի վեր է քան
զինքեանս՝ յայն երդնուն, եւ ամե-
նայն հակառակութեան նոցա վճիռ ի
17 հաստատութիւն՝ երդումն է: Որով
առաւել եւս կամեցեալ Աստուծոյ

[1] Ի Բազումս պակասէ
[2] Յոյնն, առ ընդելութեան
[3] Յոյնն, լուսաւորելոցն
[4] Ի Յոմանս պակասէ

ցուցանել ժառանգաւորաց աւետեացն
զհաստատութիւն խորհրդոյն իւրոյ,
18 միջնորդեաց երդմամբ. Զի երկու ան-
փոփոխելի իրօքն որովք անհնար իցէ
ստել Աստուծոյ՝ հաստատուն մխիթա-
րութիւն ունիցիմք, որք ապաստան
եղեաք բուռն հարկանել զհանդերձեալ
19 յուսոյն. Զոր իբրեւ զխարիսխ հաս-
տատուն եւ անշարժ ունիցիմք ան-
ձանց մերոց, որ եւ մտանիցէ ի ներքին
20 կողմն վարագուրին. Ուր կարապետն
մեր Յիսուս եմուտ վասն մեր, ըստ
կարգին Մելքիսեդեկի եղեւ քահանա-
յապետ յաւիտենից։

## ԳԼ. Է

1 Քանզի այս Մելքիսեդեկ թագաւոր էր
Սաղիմայ, քահանայ Աստուծոյ բարձ-
րելոյ, որ ել ընդ առաջ Աբրահամու,
յորժամ դարձեալ գայր ի կոտորածէ
2 թագաւորացն, եւ օրհնեաց զնա. Ո-
րում եւ տասանորդս յամենայնէ ետ
Աբրահամ. նախ թարգմանի թագաւոր
արդարութեան, ապա թագաւոր Սա-
ղիմայ՝ որ է թագաւոր խաղաղութեան.
3 Անհայր, անմայր, չհամարեալ յազգս,
որոյ ոչ սկիզբն աւուրց եւ ոչ կատա-
րած կենաց. նմանեալ Որդւոյն Աս-
տուծոյ՝ կայ մնայ քահանայ մշտնջե-
նաւոր։
4 Արդ տեսէք որպիսի ոք էր սա, ո-
րում եւ Աբրահամ տասանորդս ետ
5 յաւարէ անտի, նահապետն։ Եւ որք
յորդւոցն Ղեւեայ զքահանայութիւնն
առնուն՝ պատուէր ունին տասանորդել
զժողովուրդն ըստ օրինացն, այսինքն
է զեղբարս իւրեանց. թէպէտ եւ ել-
6 եալ իցեն յերանացն Աբրահամու. Իսկ
չհամարեալն յազգս ի նոցանէ՝ տասա-
նորդեաց զԱբրահամ, եւ զնա որոյ
7 զաւետիսն ընկալեալ էր՝ օրհնեաց։ Զի
առանց ամենայն հակառակութեան՝
նուաղն ի լաւէ անտի օրհնեսցի։
8 Եւ աստ մարդք մահկանացուք տա-
սանորդս առնուն. բայց անդ՝ [1]վկայե-
9 ցաւ թէ կենդանի է։ Եւ որպէս բա-
նից կարդ է ասել, թէ Աբրահամաւ
եւ Ղեւի իսկ որ զտասանորդսն առ-
10 նոյր՝ տասանորդեցաւ. Զի դեռ եւս
յերանս հօր իւրոյ էր, յորժամ ընդ
առաջ եղեւ նմա Մելքիսեդեկ։
11 Իսկ արդ՝ եթէ կատարումն ի ձեռն
Ղեւտացւոց քահանայութեանն էր,
(քանզի ժողովուրդն յայն օրէնսդրե-
ցաւ,) զի՞նչ պիտոյ էր ըստ կարգին
Մելքիսեդեկի այլում քահանայի յառ-
նել, եւ ոչ ասել թէ ըստ կարգին Ա-
12 հարոնի։ Այլ ի փոփոխել քահանայու-
թեանն հարկ էր եւ օրինացն փոփո-
13 խումն լինել։ Զի զորմէ այսպէսն ասի՝
յայլմէ ազգէ կալաւ հաղորդութիւն,
յորմէ ոչ ոք երբեք եղեւ հաղորդ սե-
14 ղանոյն։ Արդ յայտ իսկ է թէ յաղգէ
Յուդայ ծագեաց Տէր մեր, յորմէ ազգէ
վասն քահանայից Մովսէս ինչ ոչ ճառ-
15 եաց։ Եւ եւս առաւել յայտ է թէ ըստ
նմանութեան Մելքիսեդեկի յառնելոց
16 է այլ քահանայ, Որ ոչ ըստ մարմնա-
ւոր պատուիրանին եղեւ, այլ ըստ
զօրութեան կենացն անվախճանից։
17 Քանզի վկայեցաւ թէ Դու ես քահա-
նայ յաւիտեան ըստ կարգին Մելքի-
18 սեդեկի։ [2]Արհամարհութիւն լինէր ա-
ռաջին պատուիրանին վասն նորին
տկարութեանն եւ անշահութեան.
19 Քանզի ոչինչ կատարումն գործեցին
օրէնքն, [3]եւ մուտ աղնուական յու-
սոյն որով մերձենամք առ Աստուած։
20 Եւ այնչափ զի ոչ առանց երդման.
(զի են ոմանք որ առանց երդման են
21 կացեալ քահանայք. Բայց սա երդ-
մամբ ի ձեռն այնորիկ որ ասացն ի նա,
Երդուաւ Տէր եւ ոչ եւս զղջասցի,
22 Դու ես քահանայ յաւիտեան[4].) Եւ
այնչափ լաւագոյն ուխտի եղեւ երաշ-
խաւոր Յիսուս։
23 Եւ բազում են կացեալ քահանայք
վասն մահու արգել լինելոյ ի մշտնջե-
24 նաւորել։ Իսկ սա վասն յաւիտեան
կալոյ՝ առանց անցանելոյ ունի զքա-
25 հանայութիւնն. Ուստի եւ կենդանի
առնել համօրէն կարող է զմատու-
ցեալսն նովաւ առ Աստուած. քանզի
միշտ կենդանի է լինել բարեխօս վասն
նոցա։
26 Ա. Զի այսպիսի իսկ եւ վայել էր
մեզ քահանայապետ, սուրբ, անմեղ,

---

[1]Յոյնն, որ վկայեցաւն

[2]Յոյնն, Զի արհամարհութիւն
[3]Յոյնն, այլ
[4]Բուղամէ յաւելուածն, ըստ կարգին Մելքիսեդեկի

անարատ, զատեալ ի մեղաւորաց եւ
27 բարձրացեալ քան զերկինս. Որում ոչ
հանապազ հարկ է, որպէս այլոց քա-
հանայապետիցն, նախ վասն իւրեանց
մեղացն պատարագս մատուցանել եւ
ապա վասն ժողովրդեանն. իսկ սա
զայն միանգամայն կատարեաց, զի
28 զանձն իւր մատոյց պատարագ։ Օ-
րէնքն զմարդիկ կացուցանեն քահա-
նայապետս, զզածեալս տկարութեամբ,
իսկ բանն երդման յետ օրինացն՝ զՈր-
դի, որ յաւիտեան կատարեալ է։

## ԳԼ. Ը

1 Եւ բանից գլուխ խօսիցս՝ այնպիսի
ունիմք քահանայապետ, որ նստաւ
ընդ աջմէ Մեծութեան աթոռոյն յեր-
2 կինս, Սրբութեանցն պաշտօնեայ, եւ
խորանին ճշմարտութեան զոր Տէրն
3 կանգնեաց եւ ոչ մարդ։ Զի ամենայն
քահանայապետ վասն մատուցանելոյ
զզոհս եւ զպատարագս կայ. ուստի
հարկ է եւ նմա ունել ինչ զոր մատու-
4 ցանիցէ։ Զի եթէ էր յերկրի, թերեւս
չէր իսկ քահանայ. զի [1]գոյին որ՝՝ մա-
տուցանէին ըստ օրինացն պատարագ.
5 Որք առակաւ եւ օրինակաւ պաշտէին
երկնաւորացն, որպէս եւ հրամայեցաւ
Մովսիսի, յորժամ գործելոց էր զխորան
ժամուն, Տեսջիր, ասէ, արասցես
զամենայն ըստ օրինակին որ ցուցաւ
6 քեզ ի լերինն։ Բայց արդ առաւելագոյն
եւս պաշտաման եհաս [2]Յիսուս, որչափ
լաւագոյն եւս ուխտի է միջնորդ՝ որ
յառաւել աւետիսն օրինադրեցաւ։
7 Զի եթէ առաջինն անարատ էր, ա-
8 պա երկրորդին տեղի ոչ խնդրէր։ Նա
աւանիկ բամբասէ զնոսա. եւ ասէ,
Ահաւասիկ աւուրք եկեսցեն, ասէ
Տէր, եւ կատարեցից ի վերայ տանն
Իսրայելի եւ ի վերայ տանն Յուդայ
9 ուխտ նոր. Ոչ ըստ ուխտին զոր եդի
ընդ հարս նոցա յաւուրն յորում առի
ի ձեռն հանել զնոսա յերկրէն Եգիպ-
տացւոց. եւ զի նոքա ոչ կացին յուխ-
տին իմում, եւ ես անփոյթ արարի
10 զնոցանէ, ասէ Տէր [2]ամենակալ։ Այլ
այս է ուխտն զոր եդից տանն Իսրա-
յելի յետ աւուրցն այնոցիկ, ասէ Տէր,
տաց զօրէնս իմ ի միտս նոցա, եւ ի
սիրտս նոցա գրեցից զնոսա, եւ եղէց
նոցա Աստուած, եւ նոքա եղիցին ինձ
11 ի ժողովուրդ։ Եւ ոչ եւս ուսուցանի-
ցեն իւրաքանչիւր զքաղաքակից իւր
եւ իւրաքանչիւր զեղբայր իւր, եւ ա-
սիցեն թէ Ծանիր զՏէր. զի ամենե-
քին ծանիցեն զիս ի փոքրկանց մինչեւ
12 ցմեծամեծս նոցա. Զի քաւիչ եղէց
անիրաւութեանց նոցա, եւ զմեղս նո-
ցա եւ զանօրէնութիւնս այլ ոչ եւս
յիշեցից։
13 Արդ ասելովն նոր՝ հնացոյց զառա-
ջինն. եւ որ հնանայն եւ ծերանայ՝
մերձ է յապականութիւն։ ՎՁ

## ԳԼ. Թ

1 Ունէր ունէր եւ առաջինն իրաւունս
պաշտաման [3]յայնժամ զաշխարհական
2 սրբութիւնն։ Զի խորանն առաջին
հանդերձեցաւ [2]այսպէս, յորում աշ-
տանակն եւ սեղանն եւ՛ հացն նուի-
3 րաց, որ Սրբութիւնն կոչէր։ Եւ յետ
երկրորդ վարագուրին՝ խորանն որ կո-
4 չէր Սրբութիւն սրբութեանց. Յորում
կայր բուրվառն ոսկի, եւ արկղն կտա-
կարանաց պատեալ ներքոյ եւ արտա-
քոյ ոսկւով, յորում սափորն ոսկի լի
մանանայիւ, եւ գաւազանն Ահարոնի
որ ծաղկեցաւ, եւ տախտակք կտակա-
5 րանացն. Եւ ի վերայ նորա քերովբէքն
փառաց որ հովանի ունէին ի վերայ
քաւութեանն, վասն որոյ ոչ է այժմ
ասել մի ըստ միոջէ։
6 Եւ այն ամենայն իբրեւ այնպէս
հանդերձեալ կայր, յառաջին խորանն
յամենայն ժամ մտանէին քահանայքն
7 զպաշտամունսն կատարել. Բայց յերկ-
րորդն մի անգամ ի տարւոջն քահա-
նայապետն. եւ զայն ոչ առանց ար-
եան, զոր մատուցանէր վասն իւր եւ
վասն ժողովրդեանն անգիտութեան.
8 Զայս ցուցեալ Հոգւոյն Սրբոյ մինչ-
չեւ յայտնեալ էր ճանապարհի սրբու-
թեանցն, քանզի դեռ առաջին խորանն
9 ունէր զհաստատութիւն. Որ է առակ
ժամանակին որ առաջի կայր, յորում
պատարագքն եւ զոհք մատչէին, որք

[1]Ոմ–նք, գոյին քահանայք որ
[2]ի Յ–ն–ին պ–կ–ի

[3]կամ, և

ոչ կարէին ըստ մտաց կատարել զպաշ-
տօնեայսն, բայց միայն կերակրովք
10 եւ ըմպելեօք, Եւ պէսպէս մկրտու-
թեամբք՝ մարմնոյ արդարութիւնքն
որ մինչեւ ի ժամանակս ուղղութեանն
11 ի վերայ կային ։ Այլ Քրիստոս եկեալ
Քահանայապետ հանդերձելոցն բար-
եաց, մեծաւն եւ կատարելով եւ ան-
ձեռագործ խորանաւն, այսինքն է՝ որ
12 ոչ յայսց արարածոց, Եւ ոչ արեամբ
նոխազաց եւ զուարակաց, այլ իւրով
արեամբն եմուտ մի անգամ ի սրբու-
թիւնսն, [1]յաւիտենականս գտեալ զփրկ-
13 կութիւն՚՚։ Զի եթէ արիւն ցլուցն եւ
նոխազաց եւ մոխիր երնջոցն ցանեալ՝
զպղծեալսն սրբէր առ ի մարմնոյ սրբու-
14 թիւնէ, Ո՛րչափ եւս առաւել արիւնն
Քրիստոսի, որ ի ձեռն Հոգւոյն յա-
ւիտենականի մատոյց զանձն անարատ
[2]պատարագ Աստուծոյ, սրբեսցէ զխիղճ
մտաց ձերոց ի մեռելոտի գործոց ան-
15 տի՝ պաշտել զԱստուած կենդանի ։ Եւ
վասն այնորիկ նորոյ ուխտի է միջ-
նորդ, զի յորժամ մահ լինիցի ի փրկու-
թիւն վասն առաջին ուխտին յանցա-
նաց, զաւետիս առցեն հրաւիրեալքն
16 ի ժառանգութիւնն յաւիտենից ։ Քան-
զի ուր կտակ է, հարկ է զմահ ի մէջ
17 բերել զկտակագրին ․ Զի կտակ յետ
մահու հաստատուն է ․ ապա թէ ոչ՝
զի՞րդ իցէ հաստատուն, մինչ կտա-
18 կագիրն կենդանի է ։ Ուստի եւ ոչ
առաջինն առանց արեան նորոգէր ։
19 Քանզի իբրեւ սպառեցան ամենայն
պատուիրանք օրինացն ի Մովսիսէ
ժողովրդեանն, առեալ զարիւն ցլուցն
եւ նոխազացն, ջրով եւ բրդով կար-
միրով եւ զոպայիւ, զկտակարանօքն իսկ
եւ զամենայն ժողովրդեամբն սրսկեաց,
20 Եւ ասէ, Այս է արիւն կտակին զոր
21 պատուիրեաց ձեզ Աստուած ։ Եւ զխո-
րանաւն եւ զամենայն կահիւ սպա-
22 սուն նոյնպէս սրսկեաց զարիւնն ։ Եւ
գրեթէ ամենայն ինչ արեամբն սրբէր
ըստ օրինացն, եւ առանց հեղման ար-
եան չլինէր թողութիւն ։
23 Ապա հարկ էր [3]օրինաւորացն այն-
պիսեօքն սրբել ․ եւ բուն իսկ երկնա-
ւորացն՝ առաւել եւս պատարագօք
24 քան զնոյնս ։ Զի ոչ եթէ ի ձեռագործ
սրբութիւնսն եմուտ Քրիստոս յօրի-
նակս ճշմարտութեանն, այլ ի բուն
իսկ յերկինս, [4]յանդիման լինել երե-
25 սացն Աստուծոյ վասն մեր ։ Ոչ զի բա-
զում անգամ մատուցանիցէ զանձն
[2]պատարագ՝ որպէս քահանայապետն
որ մտանէր [5]ի սրբութիւն սրբու-
թեանցն՚՚ ամի ամի արեամբ օտարաւ ․
26 Ապա թէ ոչ՝ պարտ էր նմա բազում
անգամ չարչարել ի սկզբանէ աշխարհի ․
բայց արդ աւասիկ մի անգամ ի կա-
տարած յաւիտեանից յանարգութիւն
մեղաց իւրով պատարագաւն յայտ-
27 նեալ է ։ Եւ զոր օրինակ կայ մնայ
մարդկան մի անգամ մեռանել եւ յետ
28 այնորիկ դատաստան, Նոյնպէս եւ
Քրիստոս մի անգամ մատուցեալ [2]պա-
տարագ առ ի բառնալոյ զմեղս բազ-
մաց ․ իսկ յերկրորդումն առանց մեղաց
յայտնեսցի այնոցիկ, որ ակն ունիցին
նմա [6]հաւատովք ի փրկութիւն ։

ԳԼ. Ժ

1 Բ. **Ք**անզի զստուեր հանդերձելոց
բարեացն ունէին օրէնքն եւ ոչ զնոյն
կերպարանս իրացն, ամի ամի զնոյն
պատարագս մատուցանեն ցանգ, որք
ոչ են կարող զմատուցեալսն կատա-
2 րել ․ Ապա թէ ոչ՝ դադարէին ի մա-
տուցանելոյ, վասն եւ ոչ մի ինչ այ-
նուհետեւ խիղճ մտաց ունելոյ պաշ-
3 տօնէիցն մի անգամ սրբեցելոց ․ Այլ
անդէն ի նմին ի յիշատակս մեղացն
4 կային ամի ամի ․ Քանզի ոչ կարէր
արիւն նոխազացն եւ ցլուց բառնալ
5 զմեղս ։ Վասն որոյ ի մտանել իւրում
յաշխարհ՝ ասէ, Զզոհս եւ զպատա-
րագս ոչ կամեցար, բայց մարմին հաս-
6 տատեցեր ինձ ․ Ընդ ողջակէզս եւ ընդ
7 վասն մեղացն ոչ հաճեցար ։ Յայնժամ
ասացի թէ Ահաւասիկ եկի (ի ճառս
գրոց գրեալ է վասն իմ) առնել զկամս
8 քո, Աստուած ։ Վերագոյնն ասէ թէ
Ընդ զոհս եւ ընդ պատարագս եւ ընդ
ողջակէզս եւ ընդ վասն մեղացն ոչ
հաճեցար, եւ ոչ կամեցար (որք ըստ
9 օրինացն մատչէին), Ապա ասէ,

---

[1]Յոյնն, յաւիտենական փրկութիւն գտեալ
[2]Ի Յոյնին պակասէ
[3]Յոյնն, օրինակացն երկնաւորաց

[4]Յոյնն, այժմ յանդիման
[5]Բազումք, ի սրբութիւնն
[6]Ի Բազումս պակասէ

Անհաւասիկ գամ առնել զկամս քո, Աս-
տուած․ մերժէ զառաջինն զի զերկ-
10 րորդն հաստատեսցէ․ Որով կամօք եւ
մեք սրբեցաք ի ձեռն պատարագի մարմ-
նոյն Յիսուսի Քրիստոսի մի անգամ։
11 Եւ ամենայն քահանայապետ կայ
հանապազորդ ի պաշտաման, եւ զնոյն
պատարագս մատուցանէ բազում ան-
գամ, որք ոչ երբեք կարող են բառ-
12 նալ զմեղս․ Իսկ սա զմին վասն մեղաց
մատոյց պատարագ, եւ մշտնջենաւոր
13 նստաւ ընդ աջմէ Աստուծոյ․ Եւ այ-
սուհետեւ ակն ունի, մինչեւ դիցին
թշնամիք իւր ի ներքոյ ոտից իւրոց։
14 Քանզի միով պատարագաւ կատար-
եաց զսրբեալսն ի մշտնջենաւորս։
15 Այլ վկայէ մեզ եւ Հոգին Սուրբ
16 [1]յետ ասելոյ յառաջագոյն, Եթէ՝ Այս է
ուխտն զոր եդից [2]ընդ հարս նոցա"
յետ աւուրցն այնոցիկ, ասէ Տէր,
տաց զօրէնս իմ ի սիրտս նոցա, եւ ի
17 խորհուրդս նոցա գրեցից զնոսա, Ասա
[3]ասէ թէ" Զմեղս նոցա եւ զանօրէ-
նութիւնս նոցա այլ ոչ եւս յիշեցից։
18 Իսկ ուր թողութիւն է, ոչ եւս պիտոյ
է վասն մեղաց պատարագ։ ՎԺ
19 Ունիմք այսուհետեւ, եղբարք, հա-
մարձակութիւն ի մուտս սրբութեանցն
20 արեամբն Յիսուսի, Զոր նորոգեաց
մեզ ճանապարհ նորոգ եւ կենդանի ի
ձեռն վարագուրին, այսինքն է՝ մարմ-
21 նոյն իւրոյ, Եւ քահանայ մեծ ի վերայ
22 տանն Աստուծոյ, Մատիցուք ճշմարիտ
սրտիւք, լրութեամբ հաւատոց, լուա-
ցեալ զսիրտս ի խղճէ չարեաց եւ մկըր-
տեալ զմարմինս ի ջուրն սրբութեան․
23 Պինդ կալցուք զխոստովանութիւն
անշարժ յուսոյն, զի հաւատարիմ է
24 որ խոստացաւն։ Եւ զգուշասցուք
միմեանց յորդորմամբք սիրոյ եւ գոր-
25 ծոց բարեաց․ Եւ մի՛ թողցուք զժո-
ղովս միմեանց, որպէս եւ սովոր են
ոմանք․ այլ մխիթարեսցուք, եւ այն-
չափ եւս առաւել՝ որչափ տեսանիցէք
զօրն մերձեալ։
26 Զի կամակար մեղօք եթէ յանցանի-
ցեմք յետ ընդունելութեան գիտու-
թեան ճշմարտութեանն, այնուհետեւ
ոչ եւս պիտոյ է վասն մեղաց պատա-
27 րագ, Այլ ահեղ ակնկալութիւն դա-
տաստանին, եւ նախանձ հրոյն որ ու-
28 տիցէ զհակառակորդսն։ Արհամարհեալ
ուրուք զօրէնսն Մովսիսի, առանց ո-
ղորմութեանց առ երկուք կամ երիւք
29 վկայիւք մեռանէր․ Իսկ ո՛րչափ սաս-
տիկ պատժոց արժանի համարիցիք
զայն, որ զՈրդին Աստուծոյ առ ոտն
եհար․ եւ զարիւն [3]նորոյ ուխտին
խառնակ համարեցաւ որով եւ սրբե-
ցաւն, եւ զՀոգին շնորհաց թշնամա-
30 նեաց։ Այլ գիտեմք զայն որ ասացն,
Իմ են վրէժխնդրութիւնք, եւ ես հա-
տուցից, ասէ Տէր․ եւ դարձեալ թէ՝
31 Դատի Տէր զժողովուրդ իւր։ Ահ մեծ է
անկանել ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ։
32 Արդ յիշեցէք զաւուրսն զառաջինս,
յորս լուսաւորեալք բազում ճգանց
33 եւ չարչարանաց համբերէք․ Մերթ ի
նախատինս եւ ի նեղութիւնս խայ-
տառակեալք, մերթ կցորդ այնպիսեաց
34 վաստակաւորացն լինել։ Քանզի եւ
[4]ընդ կապեալս" չարչարեցարուք, եւ
զյափշտակութիւն ընչից ձերոց խնդու-
թեամբ ընկալարուք, քանզի գիտէիք
թէ լաւագոյն եւս ստացուածս ունիք
անձանց յերկինս, ուր կանն եւ մնան։
35 Արդ մի՛ մերժէք ի ձէնջ զհամարձա-
կութիւնն ձեր, յորում կայ մեծաց
36 վարձուց հատուցումն։ Պիտոյ է ձեզ
համբերութիւն, զի զկամս Աստուծոյ
37 արարեալ՝ հասջիք աւետեացն։ Զի
փոքր մեւս եւս քան որչափ որ գա-
38 լոցն իցէ՝ եկեսցէ, եւ ոչ յամեսցէ։ Զի
արդարն [5]իմ ի հաւատոց կեցցէ․ եւ
եթէ յերկմիտս ոք լիցէ, ոչ հաճեսցի
39 ընդ նա անձն իմ։ Բայց մեք ոչ եթէ
երկմտութեամբ եմք ի կորուստ, այլ
հաւատովք ի փրկութիւն հոգւոց։

## ԳԼ․ ԺԱ

1 Զի՞նչ են հաւատք, եթէ ոչ յուսա-
ցելոց իրաց հաստատութիւն, եւ յան-
2 դիմանութիւն որոց ոչն երեւին։ Զի
նովաւ վկայեցան առաջինքն։
3 Հաւատովք իմանամք հաստատեալ
զյաւիտեանսն բանիւ Աստուծոյ, յա-
ներեւութից զերեւելիսս եղեալ։
4 Հաւատովք լաւ պատարագս Հաբէլ

[1]Յոյնն, զի յետ
[2]Յոյնն, ընդ նոսա
[3]ի Յունին պակասէ

[4]Ոմանք, ի կապանս իմ
[5]Յոմանս պակասէ

քան զԿայէն մատուցանէր Աստուծոյ,
որով վկայեցաւ իսկ արդար լինել. զի
ի վերայ պատարագացն եղեւ վկայու-
թիւն նմա յԱստուծոյ. զի թէպէտ եւ
մեռաւ ի նմին, սակայն տակաւին
խօսի։
5 Հաւատովք Ենովք փոխեցաւ, զի
մի՛ զմահ ճաշակեսցէ. եւ ոչ ուրեք
գտանէր, քանզի փոխեաց զնա Ա-
ստուած. եւ յառաջ քան զփոխելն նորա
վկայեցաւ հաճոյ լինել Աստուծոյ։
6 Բայց առանց հաւատոց անհնար է հա-
ճոյ լինել. այլ հաւատալ արժան է
այնմ որ մերձենայ առ Աստուած՝ թէ
է [1]Աստուած. եւ որ խնդրեն զնա՝
լինի պարգեւատու։
7 Հաւատովք առեալ հրաման Նոյի
վասն չեւ եւս երեւելեացն, զահի հար-
եալ կազմէր զտապանն ի փրկութիւն
տան իւրոյ, որով դատեցաւ զաշխարհ,
եւ հաւատոցն արդարութեան եղեւ
ժառանգաւոր։
8 Հաւատովք [2]որ Աբրահամն կոչե-
ցաւ" ունկնդիր եղեւ ելանել ի տեղին
զոր առնլոց էր ի ժառանգութիւն. ել
գնաց, եւ ոչ գիտէր յո՛ երթիցէ։
9 Հաւատովք պանդխտեցաւ յերկրին
աւետեաց իբրեւ յօտարութեան, խո-
րանօք բնակեաց Իսահակաւ եւ Յա-
կովբաւ հանդերձ, ժառանգակցօք նո-
10 ցին աւետեաց։ Քանզի ակն ունէր
հիմամբք հաստատելոյ քաղաքին, որոյ
ճարտարապետ եւ արարիչ Աստուած է։
11 Հաւատովք եւ ինքն Սառա [3]որ ա-
մուլն էր", զօրութիւն առնլոյ զսերմն
[3]որդեծնութեան՝ ընդունէր, եւ ի սա-
րաժամ հասակի [3]ծնանէր. քանզի հա-
ւատարիմ համարեցաւ զայն որ խոս-
12 տացաւն։ Վասն որոյ եւ ի միոջէն
ծնանէին, եւ այն՝ [4]յանցեալ ժամանա-
կի", իբրեւ զաստեղս երկնից բազմու-
թեամբ, եւ իբրեւ զաւազ առ ափն
ծովու առանց թուոյ։
13 Ըստ հաւատոց մեռան ամենեքին
սոքա, եւ չեւ եւս ընկալեալ զաւե-
տիսն. այլ ի հեռուստ տեսին զնոսա
[5]եւ ցնծացան, եւ խոստովան եղեն ե-
թէ օտարք եւ պանդուխտք են յերկրի։
14 Զի որք զայնպիսին խօսին՝ յայտ առ-
15 նեն եթէ գաւառ ինչ խնդրեն։ Զի
եթէ զայն յիշէին ուստի ելինն՝ գոյր
16 ժամանակ դառնալոյ անդրէն։ Նա ա-
ւանիկ ազնուականի ինչ ցանկացեալ
են, այսինքն է երկնաւորին. վասն
որոյ ոչ ամօթ համարի Աստուած կո-
չել նոցա Աստուած, քանզի պատրաս-
տեաց նոցա քաղաք։
17 Հաւատովք մատոյց Աբրահամ ի
փորձութեան իւրում զԻսահակ [1]պա-
տարագ. եւ զմիամօրն մատուցանէր,
18 որոյ զաւետիսն ընկալեալ էր։ Որում
ասացաւ, թէ Իսահակաւ կոչեսցի
19 քեզ զաւակ. Եդ ի մտի իւրում թէ
եւ ի մեռելոց կարող է յարուցանել
Աստուած. ուստի եւ յառակս իսկ
ընկալաւ զնա։
20 Հաւատովք վասն հանդերձելոց իրաց
օրհնեաց Իսահակ զՅակովբ եւ զԵսաւ։
21 Հաւատովք Յակովբ ի մեռանելն իւ-
րում զիւրաքանչիւր ոք յորդւոցն
Յովսեփու օրհնեաց, եւ երկիր եպագ
ի ծայր գաւազանի իւրոյ։
22 Հաւատովք Յովսէփ ի վախճանել
իւրում յիշեաց զելս որդւոցն Իսրա-
յելի, եւ վասն ոսկերաց իւրոց պատ-
ուիրեաց։
23 Հաւատովք [6]զՄովսէս իբրեւ ծնաւն",
թաքուցաւ ամիսս երիս ի հարց իւրոց,
քանզի տեսին կայտառ զմանուկն, եւ
ոչ զանգիտեցին ի հրամանէ թագա-
24 ւորին։ Հաւատովք Մովսէս, իբրեւ
անեաց, ուրացաւ կոչել որդի դստերն
25 Փարաւոնի. Լաւ համարեցաւ չարչա-
րել ընդ ժողովրդեանն Աստուծոյ, քան
առ ժամանակ մի վայելել ի մեղս.
26 [7]Կարեւոր համարեցաւ զնախատինսն
Քրիստոսի քան [8]զմեծութիւն գան-
ձուցն" Եգիպտացւոց, զի հայեցեալ
ակն ունէր վարձուցն հատուցման։
27 Հաւատովք թողոյր զերկիրն Եգիպ-
տացւոց, եւ ոչ երկնչէր ի ցասմանէ
թագաւորին, զի [9]զաներեւոյթն իբրեւ
տեսեալ համբերութեամբ համարե-
28 ցաւ։ Հաւատովք արար զզատիկն եւ
զհեղումն արեանն, զի մի՛ սատակիչն
անդրանկաց մերձենայցէ ի նոսա։

[1]Ի Յոյնն պակասէ
[2]Կամ, կոչեցեալն Աբրահամու
[3]Ի Բազումս պակասէ
[4]Յոյն, ի մեռելոց
[5]Ոմանք, և հաւատացին և
[6]Յոյն, Մովսէս իբրեւ ծնաւ
[7]Յոյն, Առաւել մեծութիւն
[8]Յոյն, զգանձս
[9]Յոյն, զԱներեւոյթն

29 Հաւատովք անցին ընդ ծովն Կար-
միր իբրեւ ընդ ցամաք երկիր․ զորոյ
զփորձ առեալ Եգիպտացւոցն՝ ընկղմե-
ցան ։
30 Հաւատովք պարիսպքն Երիքովի ան-
կան, շուրջ եկեալ զնոքօք զեւթն օր ։
31 Հաւատովք Ռախաբ պոռնիկ ոչ կոր-
եաւ ընդ անհաւատսն, որոյ ընկալեալ
էր զլրտեսսն խաղաղութեամբ ։
32 Եւ արդ զի՞նչ եւս ասացից․ զի չէ
բաւական ժամանակս պատմելոյ վասն
Գեդէոնի , Բարակայ , Սամփսոնի ,
Յեփթայեայ, Դաւթի եւ Սամուելի եւ
33 [1]այլոց մարգարէիցն․ Որք հաւատովք
պարտեցին զթագաւորութիւնս, գոր-
ծեցին զարդարութիւն , հասին աւե-
34 տեաց , խցին զբերանս առիւծուց , Շի-
ջուցին զզօրութիւն հրոյ , ապրեցան
ի բերանոյ սրոյ , զօրացան ի տկարու-
թենէ , եղեն զօրաւորք ի պատերազմի,
35 աւրին զբանակս օտարաց․ Ընկալան
կանայք ի յարութենէ զմեռեալս իւր-
եանց․ կէսք կոչկոճեցան , եւ չեւ եւս
ընկալեալ զփրկութիւն , զի լաւագոյն
36 յարութեանն հասանիցեն․ Եւ կէսք
զտանջանաց եւ զգանից զփորձ առին ,
37 զկապանաց եւ զբանտից․ Քարկոծե-
ցան , սղոցեցան , փորձեցան , սպան-
մամբ սրոյ մեռան , շրջեցան լաշկա-
մաշկօք եւ մորթովք այծենեօք․ կա-
րօտեալք , նեղեալք , չարչարեալք ․
38 (Զորս ոչ արժէ աշխարհս ․) յանապատի
մոլորեալք եւ ի լերինս եւ յայրս եւ
ի փապարս երկրի ։
39 Եւ սոքա ամենեքին վկայեալք ի
հաւատոյն , չեւ եւս ընկալան զաւե-
40 տիսն ․ Աստուծոյ վասն մեր [2]լաւագոյն
համարեալ՝՝, զի մի՛ առանց մեր կա-
տարեսցին ։

## ԳԼ․ ԺԲ

1 Այսուհետեւ եւ մեք որ այսչափ շուրջ
զմեւք մածեալ ունիմք զբազմութիւն
վկայից , [3]զհպարտութիւն զամենայն
ի բաց ընկեսցուք եւ զմեղս [4]կարե-
ւորս , համբերութեամբ ընթասցուք
ի պատերազմ որ առաջի կայ մեզ ․
2 Հայեսցուք ի զօրագլուխն հաւատոց
եւ ի կատարիչն Յիսուս , որ փոխա-
նակ ուրախութեանն որ նմա առաջի
կայր՝ յանձն առ զխաչն , արհամարհեաց
զամօթն , նստաւ ընդ աջմէ աթոռոյն
Աստուծոյ ։
3 Ազէ ածէք զմտաւ , որ զայսպիսի
համբերութիւն ի մեղաւորաց հակա-
ռակութենէ անտի կրեաց , զի մի՛ աշ-
խատք լինիցիք անձամբք ձերովք եւ
4 լքանիցիք ։ Զի չեւ եւս արեամբ չափ
պատերազմեալք հակառակ կացէք մե-
5 ղացն ․ Եւ մոռացարուք զմխիթարու-
թիւնն որ ընդ ձեզ իբրեւ ընդ որդ-
եակս խօսի ․
Գ․ Որդեակ իմ, մի՛ լքանիր ի խրա-
տու Տեառն , եւ մի՛ վհատիցիս յան-
6 դիմանեալ ի նմանէ ։ Զի զոր սիրէ
Տէր՝ խրատէ , տանջէ զամենայն որդի
7 զոր ընդունի ։ Ի խրատու համբերու-
թեան կայք , իբրեւ յորդիս մատու-
ցեալ է ի ձեզ Աստուած ․ ո՞ր որդի է
8 զոր ոչ խրատիցէ հայր ։ Զի եթէ ա-
ռանց խրատու լինիցիք , որով ամե-
նեքին բաժանորդք եղեն , ապա խորթք
9 իցէք եւ ոչ որդիք ։ Զի եթէ ի մարմ-
նաւոր հարցն մերոց զոր ունիմք խրա-
տիչս՝ պատկառեմք , ո՞րչափ եւս ա-
ռաւել հնազանդեսցուք Հօրն հոգւոց ,
10 եւ կեցցուք ։ Զի նոքա առ սակաւ ժա-
մանակս ըստ կամաց իւրեանց խրա-
տեն ․ իսկ նա վասն օգտի , առ ի յըն-
11 դունելոյ զսրբութիւն նորա ։ Ամենայն
խրատ առ ժամանակն ոչ ուրախու-
թեան թուի , այլ՝ տրտմութեան , բայց
յետոյ պտուղ խաղաղութեան նոցա
կրթեցելոցն հատուցանէ յարդարու-
թիւն ։
12 Վասն որոյ զձեռս լքեալս եւ զծունկս
13 կթոտս հաստատեցէք ․ Եւ զշաւիղս
ուղիղս արարէք ոտից ձերոց , զի մի՛
որ կաղն իցէ՝ գլորիցի , այլ մանաւանդ
14 բժշկեսցի ։ Զխաղաղութեան զհետ եր-
թայք ընդ ամենեսին եւ զսրբութեան,
առանց որոյ ոչ ոք տեսանիցէ զՏէր ։
15 Զգոյշ լերուք , գուցէ ոք յետնեալ
գտանիցի ի շնորհացն Աստուծոյ ․ մի՛
ոք արմատ դառնութեան ի վեր երեւ-
եալ նեղիցէ , եւ նովաւ բազումք պղծի-
16 ցին ։ Մի՛ ոք պոռնիկ եւ պիղծ իբրեւ
զԵսաւ , որ ընդ միոյ կերակրոյ զան-
17 դրանկութիւնն վաճառեաց ։ Գիտէք

[1] Ի Բաղատ․ պակասէ
[2] Յոյն, լաւագոյն տեսեալ կանխաւ
[3] Կամ, զծանրութիւն
[4] Յոյն, որ դիւրաւ պաշարեն

զի թէպէտեւ յետոյ կամեցաւ ժառան-
գել զօրհնութիւնսն, խոտան գտաւ․
զի եւ ապաշխարութեան տեղի ոչ ե-
գիտ, թէպէտեւ արտասուօք խնդ-
րեաց զնա։
18 Դ․ Զի ոչ էք մատուցեալ առ լեառն
շօշափելի, որ հրովն վառեալ էր, [1]եւ
միգով եւ մառախղով եւ խաւարաւ
19 եւ մթով, Ուր փողն հնչէր եւ բար-
բառ պատգամացն՝․ ուստի որք լուանն՝
[2]հրաժարեցին, զի մի՛ կրկնեսցի առ
20 նոսա բանն․ Քանզի ոչ հանդարտէին
հրամանին․ [3]Թէպէտեւ գազան մեր-
ձենայր ի լեառնն, քարկոծ լինէր՝։
21 Եւ այնպէս ահագին էր տեսիլն, զի
եւ Մովսէս ասէր եթէ Զահի հարեալ
22 եմ եւ դողամ։ Այլ մատուցեալ էք ի
Սիովն լեառն, եւ ի քաղաք Աստուծոյ
կենդանւոյ, յԵրուսաղէմ յերկինս, եւ
23 ի բիւրաւոր բանակս հրեշտակաց, Եւ
յեկեղեցիս անդրանկաց գրելոց յեր-
կինս, եւ առ դատաւորն ամենեցուն
Աստուած, եւ յոգիս արդարոց կա-
24 տարելոց, Եւ ի Նորոց կտակարանաց
միջնորդն Յիսուս, եւ ի հեղումն ար-
եան նորա որ առաւել խօսի քան
զՀաբելին։
25 Զգոյշ լերուք, գուցէ հրաժարիցէք
յայնմանէ որ խօսեցաւն․ զի եթէ նո-
քա ոչ կարացին զերծանել, հրաժար-
եալք յայնմանէ որ յերկրին հրաման
տայր, ո՜րչափ եւս առաւել մեք, եթէ
յերկնաւորէն թիկունս դարձուցանի-
26 ցեմք․ Որոյ ձայնն զերկիր շարժեաց
յայնժամ, եւ այժմ խոստացեալ է եւ
ասէ, Միւսանգամ շարժեցից ոչ միայն
27 զերկիր, այլ եւ զերկինս։ Այլ միւս-
անգամն յայտ առնէ զշարժելոցն իբրեւ
զեղելոց փոփոխումն, զի հաստատուն
28 կայցեն անշարժքն։ Վասն որոյ թա-
գաւորութիւն անշարժ ընկալեալ՝ ունիցիմք
կալցուք զշնորհսն, որով պաշտեմք
զԱստուած հաճութեամբ՝ ահիւ եւ դո-
29 ղութեամբ․ Քանզի Աստուած մեր
հուր ծախիչ է։

ԳԼ․ ԺԳ

1 Եղբայրսիրութիւն հաստատեսցի [4]առ
2 ձեզ՝։ Զօտարասիրութիւն մի՛ մոռա-
նայք, զի այնու ոմանք յանպէտս ըն-
3 կալան զհրեշտակս։ Յուշ լիցին ձեզ
կապեալքն, որպէս թէ դուք ընդ նոսա
կապեալք իցէք․ եւ չարչարեալքն,
որպէս թէ եւ դուք իսկ [5]մարմնաւորք
4 էք՝։ Պատուական է ամուսնութիւն
ամենեւին, եւ սուրբ՝ անկողինք․ բայց
զշունս եւ զպոռնիկս դատի Աստուած։
5 Բարք անարծաթասէրք լինիցին, բա-
ւական համարել որչափ ինչ ի ձեռս
իցէ․ քանզի ինքն իսկ ասաց, Ոչ թո-
ղից զքեզ եւ ոչ ընդ վայր հարից․
6 Որպէս զի համարձակ լիցուք ասել,
Տէր է իմ օգնական եւ ես ոչ երկիցայց,
7 զի՞ արասցէ ինձ մարդ։ Յիշեցէք զա-
ռաջնորդս ձեր որ խօսեցան ձեզ զբանն
Աստուծոյ․ հայեցեալք յելս գնացից
նոցա՝ նմանողք եղերուք հաւատոցն։
8 Յիսուս Քրիստոս երէկ եւ այսօր,
9 նոյն եւ յաւիտեանս։ Յուսմունս պէս-
պէսս եւ յօտարաձայնս մի՛ դանդաչէք․
զի լաւ է շնորհօք հաստատել զսիրտս
եւ ոչ կերակրովք․ որովք ոչինչ օգ-
տեցան որ այնպէսն գնացին։
10 Ե․ Ունիմք մեք սեղան, ուստի ոչ
ունին իշխանութիւն ճաշակել որք
11 պաշտեն զպաշտօն խորանին․ Զի որոց
անասնոց մատչէր արիւնն ի սրբու-
թիւնսն վասն մեղաց ի ձեռն քահա-
նայապետին, նոցուն մարմինք այրէին
12 արտաքոյ բանակին։ Վասն որոյ եւ
Յիսուս, զի սրբեսցէ իւրով արեամբն
զժողովուրդն, արտաքոյ դրանն չար-
13 չարեցաւ։ Արդ եկայք ելցուք առ նա
արտաքոյ բանակին՝ առեալ յանձն զնա-
14 խատինս նորա։ Քանզի ոչ եթէ ու-
նիմք քաղաք որ աստէն մնայցէ իցէ,
15 այլ զհանդերձեալսն խնդրեմք։ Արդ
ի ձեռն նորա մատուսցուք պատարագ
օրհնութեան յամենայն ժամ Աստու-
ծոյ․ այսինքն է՝ զպտուղ շրթանց խոս-
16 տովանելոյ յանուն նորա։ Զբարերա-
րութիւն եւ զհաղորդութիւն մի՛ մո-
ռանայք, զի ընդ այնպիսի պատարագս
17 հաճի Աստուած։ Ունկնդիր լերուք

[1] Յոյնն, և ոչ ի մէգ և ի խաւար և ի մրրիկ, (19) Եւ ի հնչումն փողոյ և ի բարբառ պատգամաց
[2] կամ, աղաչեցին
[3] Յոյնն, Մինչեւ իսկ գազան մերձենայցէ ի լեառնն, քարկոծեսցի, «մանդ յաւելան», կամ նետիւք խոցոտեսցի

[4] Ի Յոյնն պակասէ
[5] Յոյնն, էք ի մարմնի

առաջնորդաց ձերոց, եւ հպատակ կա-
ցէք [1]նոցա, զի նոքա տքնին վասն
ոգւոց ձերոց, որպէս թէ համարս տա-
լոց իցեն [2]ընդ ձեր՝՝. զի խնդութեամբ
արասցեն զայն եւ մի՛ յոգւոց հանե-
լով, զի այն ոչ յօգուտ ձեր է ։
18 ԿԻՐ. Աղօթս արարէք վասն մեր, զի
հաստատեալ գիտեմք եթէ բարւոք
միտս ունիմք, յամենայնի կամիմք
19 բարւոք գնացս ցուցանել ։ Եւ առաւել
աղաչեմ զի զայն առնիցէք, զի վա-
20 ղագոյն պատսպարեցայց ձեզ ։ Եւ Ա-
տուած խաղաղութեան որ եհան ի
մեռելոց զՀովիւն հօտից, զմեծն ար-
եամբ յաւիտենական ուխտին, զՏէր
21 մեր Յիսուս, Հաստատեսցէ զձեզ ի
գործս բարութեան առնել զկամս նո-
րա, եւ արասցէ [3]ի մեզ զհաճոյսն ա-
ռաջի իւր ի ձեռն Յիսուսի Քրիստոսի,
որում փառք յաւիտեանս ։ Ամէն ։
22 Աղաչեմ զձեզ, եղբարք, անսալ բա-
նիս մխիթարութեան, քանզի սակա-
23 ւուք գրեցի ձեզ ։ Եւ ճանաչէք զեղ-
բայրն [4]մեր զՏիմոթէոս զարձակեալն
[2]առ ձեզ՝՝. ընդ որում, եթէ վաղագոյն
24 գայցէ, տեսից զձեզ ։ Ողջոյն տաջիք
ամենայն առաջնորդաց ձերոց եւ ա-
մենայն սրբոց. ողջոյն տան ձեզ որ
25 ի կողմանս Իտալիացւոց են ։ Շնորհք
ընդ ամենեսին ձեզ ։[5]

Առ Եբրայեցիս գրեցաւ յԻտալիայ ի ձեռն Տիմոթէոսի ։



# [6]ԹՈՒՂԹ

## ՍՐԲՈՅ ԱՌԱՔԵԼՈՅՆ ՅԱԿՈՎԲԱՅ

## ԿԱԹՈՂԻԿԷ՝՝



### ԳԼՈՒԽ Ա

1 ԱԴ. ՅԱԿՈՎԲՈՍ, Աստուծոյ եւ Տեառն
Յիսուսի Քրիստոսի ծառայ, երկոտա-
սան ազգացդ որ ի սփիւռս էք՝ ողջոյն ։
2 Ամենայն ուրախութեան արժանի
համարիջիք, եղբարք, յորժամ ի պէս-
պէս փորձութեանց ի մէջ անկանիցիք.
3 Գիտասջիք զի հանդէս ձերոց հաւա-
տոցն յօրինեալ գործէ զհամբերութիւն ։
4 Իսկ համբերութիւնն գործ կատարեալ
ունիցի, զի իցէք ողջանդամք եւ կա-
տարեալք, եւ ոչ ինչ իւիք նուազեալք ։
5 Ապա թէ ոք ի ձէնջ իցէ նուազեալ
յիմաստութենէ, խնդրեսցէ յԱստու-
ծոյ որ տայն ամենայնի առատապէս
6 եւ ոչ նախատէ, եւ տացի նմա ։ Բայց
խնդրեսցէ հաւատովք եւ մի՛ երկմտես-
ցէ. զի որ երկմիտն է՝ նման է հող-
մակոծեալ եւ տատանեալ ալեաց ծո-
7 վու. Մի՛ ակնկալցի մարդն այն առ-
8 նուլ ինչ [7]յԱստուծոյ. Զի այր երկմիտ
առանց հաստատութեան է յամենայն
ճանապարհս իւր ։
9 Պարծեսցի եղբայր խոնարհ ի բարձ-
10 րութիւն իւր, Եւ որ մեծատունն իցէ՝
ի խոնարհութիւն իւր. քանզի իբրեւ
11 զծաղիկ խոտոյ անցցէ. Զի ծագեաց ա-
րեւ հանդերձ խորշակաւ եւ ցամաքե-
ցոյց զխոտն, եւ թօթափեցաւ ծաղիկն
նորա, եւ կորեաւ վայելչութիւն երեսաց
նորա. Նոյնպէս եւ մեծատունն [8]հան-
դերձ չահիւքն իւրովք՝՝ թարշամեսցի ։

[1] Ի բազումս պակասէ
[2] Ի Յոյնին պակասէ
[3] Ոմանք, ի ձեզ
[4] Յոմանս պակասէ
[5] Բազումք յաւելուն, Ամէն

[6] Ոմանք, Թուղթ Յակովբայ կաթողիկէ. այլք, որպէս և ոմանք ի Հայերէն ձեռագրաց, Թուղթ Յակովբայ
[7] Յոյնն, ի Տեառնէ
[8] Յոյնն, ի գնացս իւր

12 Երանեալ է այր որ համբերիցէ փոր-
ձանաց. զի եթէ ընտիր եւս գտանիցի,
առցէ զպսակն կենաց՝ զոր խոստացաւ
սիրելեաց իւրոց [1]Տէր։
13 ԱԵ. Մի՛ ոք որ ի փորձութեան իցէ
ասիցէ թէ յԱստուծոյ փորձիմ. զի Աս-
տուած անփորձ է չարեաց, փորձէ նա
14 եւ ոչ զոք։ Իւրաքանչիւր ոք փորձի
առ ի յիւրոցն ցանկութեանց ձգեալ
15 եւ պատրեալ։ Ապա այնուհետեւ ցան-
կութիւնն յղացեալ՝ զմեղս ծնանի, եւ
16 մեղքն կատարեալ՝ զմահ ծնանին։ Մի՛
17 խաբիք, եղբարք իմ սիրելիք. Զի ա-
մենայն տուրք բարիք եւ ամենայն
պարգեւք կատարեալք ի վերուստ են
իջեալ առ ի Հօրէն լուսոյ, յորում չիք
փոփոխումն եւ կամ շրջելոյ ստուեր։
18 Կամեցեալ ծնաւ զմեզ բանիւն ճշմար-
տութեան, լինել մեզ [2]պտուղ ինչ
ստացուածոց նորա։
19 [3]Գիտասջիք, եղբարք իմ սիրելիք,
եղիցի ամենայն մարդ արագ առ ի լսել,
եւ ծանր առ ի խօսել, եւ ծանր առ
20 ի բարկանալ։ Զի բարկութիւն մար-
դոյ զարդարութիւն Աստուծոյ ոչ գոր-
21 ծէ։ Որով ի բաց թօթափեալ զամե-
նայն աղտեղութիւն եւ զյաւելուածս
չարեաց, հեզութեամբ ընդունիջիք
զբանն ընդաբոյս, որ կարօղն է կե-
22 ցուցանել զոգիս ձեր։ Լինիջիք առնե-
լիք բանին, եւ մի՛ լսելիք միայն [4]հա-
23 մարեսջիք զանձինս։ Զի եթէ ոք լսելի
միայն իցէ բանին եւ ոչ առնելի, նման
է նա մարդոյ որ պշուցեալ հայիցի
ընդ [5]երեսս իւր որ ծնանիցին" ի հա-
24 յելւոջ. Զի հայեցեալ ետես զինքն եւ
զանց արար, եւ անդէն մոռացաւ թէ
25 որպիսի ոք էր։ Իսկ որ յառեալ ի կա-
տարեալ օրէնս ազատութեանն հայիցի
եւ ի նմին կացցէ, ոչ եղեւ նա լսող
մոռացութեան, այլ՝ առնելի գործոյն.
նա յառնելն իւրում լիցի երանելի։
26 Եթէ [6]ոք կամիցի կրօնաւոր լինել եւ
ոչ սանձահարիցէ զլեզու իւր, այլ
[7]զբաղեցուցանիցէ զսիրտն իւր, այն-
պիսւոյն վայրապար է կրօնաւորու-
27 թիւնն։ Կրօնաւորութիւն սուրբ եւ
անարատ առ ի յԱստուծոյ եւ ի Հօրէ
այս է, Այցելու լինել որբոց եւ այրեաց
ի նեղութեան իւրեանց, անարատ պա-
հել զանձն յաշխարհէ։

Գլ. Բ

1 ԱԶ. Եղբարք իմ, մի՛ աչառանօք ու-
նիցիք զհաւատսն Տեառն մերոյ Յի-
սուսի Քրիստոսի, [8]որ Տէրն է" փա-
2 ռաց։ Եթէ մտցէ ի ժողովուրդ ձեր
այր որ ունիցի մատանի ոսկի եւ հան-
դերձս պայծառս, մտանիցէ անդր եւ
աղքատ ոք ի հանդերձս աղտեղիս,
3 Հայիցիք ընդ այն որ ունիցի զհան-
դերձսն պայծառս, եւ ասիցէք եթէ
Դու նիստ աստ պատուով, եւ ցաղ-
քատն ասիցէք եթէ Դու կաց դու
այտի, կամ թէ՝ Եկ նիստ առ պատ-
4 ուանդանիս իմում, Ո՞չ խղճիցէք յան-
ձինս եւ լինիցիք դատաւորք չարացն
5 խորհրդոց։ Լուարուք [8]ինձ, եղբարք
իմ սիրելիք. ո՞չ ապաքէն Աստուած
ընտրեաց զաղքատս աշխարհիս, որ են
մեծատունք հաւատովք, եւ ժառան-
գաւորք արքայութեանն զոր խոստա-
6 ցաւ սիրելեաց իւրոց։ Եւ դուք ա-
նարգէք զաղքատս. ո՞չ մեծատունք
յաղթահարեն զձեզ, եւ նոքա քարշեն
7 զձեզ ի դատաստան։ Ո՞չ նոքա հայհո-
յեն զբարւոք անունն որ կոչեցեալ է
8 ի վերայ ձեր։ Ապա թէ զօրէնսն կա-
տարիցէք զարքունականս ըստ Գրոց,
եթէ՝ Սիրեսցես զընկեր քո իբրեւ
9 զանձն քո, բարւոք առնէք. Իսկ եթէ
աչառիցէք, մեղս գործէք՝ յանդիմա-
նեալք յօրինացն իբրեւ օրինազանցք։
10 Որ ոք զամենայն օրէնսն պահիցէ, եւ
միով իւիք ինչ գթիցէ, եղեւ ամենայն
11 օրինացն պարտապան։ Զի որ ասացն
թէ [9]Մի՛ սպանանիցես, ասաց թէ՝ Եւ
մի՛ շնայցես. զի եթէ սպանանիցես
ոչ, բայց շնայցես", եղեր յանցաւոր
12 օրինացն։ Այնպէս խօսեցարուք եւ
այնպէս արարէք, որպէս զի ազատու-
13 թեան օրինօքն իցէք դատելոց։ Զի ա-
նողորմ դատաստան լինելոց է այնմ
որ ոչ առնիցէ զողորմութիւն, [10]քանզի

[1]Յոմանս ի Յոյն և ի Հայ ձեռագրաց պակասէ
[2]Յոյնն, երախայրի
[3]Ոմանք, Ուստի
[4]Կամ, խաբելով
[5]Յոյնն, երեսս ծննդեան իւրոյ
[6]Ոմանք, ոք ի ձեզ
[7]Յոյնն, խաբիցէ

[8]Ի Յունին պակասէ
[9]Բազումք, Մի՛ շնայցես, ասաց թէ՝ Եւ մի՛ սպանանիցես. զի եթէ շնայցես ոչ, բայց սպանանիցես
[10]Ի Յոյն ձեռագրաց յոմանս, և, յայլս՝ պակասէ

բարձր ի գլուխ պարծի ողորմութիւն
առ դատաստանաւն ։
14 ԱԷ. Զի՞նչ օգուտ իցէ, եղբարք իմ,
եթէ ասիցէ ոք հաւատս ունել եւ գործս
ոչ ունիցի. միթէ կարիցէ՞ն հաւատքն
15 ապրեցուցանել զնա ։ Եթէ եղբայր ոք
կամ քոյր իցեն մերկք կամ կարօտեալ
16 աւուրն կերակրոյ, Ասիցէ ոք ի ձէնջ
ցնոսա, Երթայք խաղաղութեամբ, ջե-
ռարուք եւ յագեցարուք. եւ տայցէք
ոչ նոցա զպէտս մարմնոյն, զի՞նչ օ-
17 գուտ իցէ ։ Սոյնպէս եւ հաւատք եթէ
գործս ոչ ունիցին, մեռեալ են առան-
18 ձինն ։ Այլ թերեւս ասիցէ ոք, եթէ՝
Դու հաւատս ունիս, եւ ես գործս
ունիմ. ցոյց ինձ զհաւատսն քո առանց
գործոց, եւ ես ցուցից քեզ ի գործոց
19 իմոց զհաւատսն ։ Դու հաւատաս զի
մի է Աստուած, բարւոք առնես. եւ
20 դեւք հաւատան եւ սարսեն ։ Կամի՞ս
գիտել, ով մարդ մնոտի, զի հաւատք
21 առանց գործոց [1]դատարկ են ։ Աբրա-
համ հայր մեր ո՞չ ապաքէն ի գործոց
արդարացաւ՝ հանեալ ի սեղան զորդին
22 իւր զԻսահակ [2]պատարագ ։ Տեսանե՞ս
զի հաւատքն եղեն գործակից գործոց
նորա, եւ ի գործոց անտի հաւատքն
23 կատարեցան ։ Եւ կատարեցաւ Գիրն
որ ասէ, Հաւատաց Աբրահամ յԱս-
տուած, եւ համարեցաւ նմա յարդա-
րութիւն. եւ կոչեցաւ բարեկամ Աս-
24 տուծոյ՝ ։ Տեսանէ՞ք զի ի գործոց ար-
դարանայ մարդ, եւ ոչ ի հաւատոց
25 միայն ։ Սոյնպէս եւ Ռախաբ պոռնիկ
ո՞չ ապաքէն ի գործոց արդարացաւ,
ընկալեալ զլրտեսսն, եւ ընդ այլ ճա-
26 նապարհ արձակեաց ։ Զոր օրինակ
մարմին առանց հոգւոյ մեռեալ է,
սոյնպէս եւ հաւատք առանց գործոց
մեռեալ են ։

ԳԼ. Գ

1 ԲԱ. Մի՛ բազում վարդապետս լինել,
եղբարք իմ, գիտասջիք զի մեծ դա-
2 տաստան ընդունելոց եմք. Բանզի
բազում ինչ յանցանեմք ամենեքեան.
եթէ ոք բանիւ ոչ յանցանիցէ, նա է
մարդ կատարեալ, որ կարօղն է սան-
3 ձահարել զամենայն մարմին իւր ։ Տես
զի ձիոց սանձս ի բերան դնեմք առ ան-
սալոյ նոցա մեզ, եւ զամենայն մար-
4 մինս նոցա նուաճեմք ։ Ահաւասիկ եւ
նաւք որպիսի՛ ինչ են, եւ ի սաստիկ
հողմոց վարին. եւ փոքր թեւոմբ չրջին
յոր կոյս եւ միտք ուղղչին կամիցին ։
5 Սոյնպէս եւ լեզու փոքր ինչ անդամ է
եւ մեծամեծս բարբառի. ահա եւ սա-
կաւ ինչ հուր զորպիսի՛ անտառս հրդե-
6 հէ ։ Եւ լեզու հուր՝ [3]զարդ անիրա-
ւութեան. լեզու հաստատեալ է յան-
դամս մեր, որ զամենայն մարմինն
ապականէ, եւ վառէ հրով զանիւ
ծննդեան, եւ բորբոքեալ տոչորի [4]ի
7 գեհենի ։ Ամենայն բնութիւն գազա-
նաց եւ թռչնոց եւ սողնոց եւ որ ի
ծովու են, հնազանդեալ է եւ հնազան-
8 դի մարդկեղէն բնութեան. Բայց զլե-
զու մարդկան ոչ ոք կարէ հնազան-
դել, զչարն եւ զանկարգ եւ զլի թու-
9 նոք մահաբերիւն ։ Նովաւ օրհնեմք
[5]զՏէրն եւ զՀայր. եւ նովաւ անիծա-
նեմք զմարդիկ որ ըստ նմանութեան
10 Աստուծոյ արարան ։ Ի նմին բերանոյ
ելանեն օրհնութիւնք եւ անէծք. ոչ է
պարտ, եղբարք իմ, այսմ այսպէս լի-
11 նել ։ Միթէ աղբեւր անդստին ի միոյ
12 ականէ բղխիցէ՞ քաղցր եւ դառն ։ Մի-
թէ մա՞րթ ինչ իցէ, եղբարք իմ, թզե-
ւոյ ձէթ բերել, կամ որթոյ թուզ,
[6]եւ ոչ աղտաղտին տեղւոյ ջուր քաղցր
առնել՝ ։
13 ԲԲ. Ո՞վ իցէ իմաստուն եւ հանճա-
րեղ ի ձեզ, ցուցցէ ի բարւոք գնացից
զգործս իւր հեզութեամբ իմաստու-
14 թեան ։ Ապա եթէ նախանձ եւ դառ-
նութիւն եւ հակառակութիւն ունի-
ցիք ի սիրտս ձեր, մի՛ պարծիք սուտ
15 առնել զճշմարտութիւնն ։ Ոչ է իմաս-
տութիւնս այս իջեալ ի վերուստ, այլ
16 երկրաւոր, շնչաւոր եւ դիւական ։ Զի
ուր հեռ եւ նախանձ, անդ է անկար-
17 գութիւն եւ ամենայն իրք չարք ։ Իսկ
վերին իմաստութիւնն նախ զի սուրբ
է, եւ ապա խաղաղարար, հեզ, դիւ-
րահաւան, լի ողորմութեամբ եւ
պտղովք բարեաց, անխիղճ, առանց

[1]Բառացի; մեռեալ
[2]Ի Յոյնն պակասէ

[3]Կամ, աշխարհ
[4]Յոյնն, ի գեհենէ
[5]Ոմանք, զԱստուած
[6]Ոմանք, Նոյնպէս և ոչ իմիք աղբեր ջուր քաղցր և աղտաղտին առնել

18 կեղծաւորութեան ։ Պտուղ արդարու-
թեան խաղաղութեամբ սերմանի այ-
նոցիկ՝ որ առնեն զխաղաղութիւն ։

## ԳԼ. Դ

1 Ուստի՞ պատերազմունք, եւ ուստի՞
կռիւք ի ձեզ. ո՞չ յայդպիսի ցանկու-
թեանց ձերոց որ զօրացեալ են յան-
2 դամս ձեր ։ Ցանկայք, եւ ոչ ունիք.
սպանանէք եւ նախանձիք, եւ ոչ կա-
րէք հասանել. պատերազմիք, կռուիք,
եւ ոչ ունիք, վասն զի ոչ խնդրէք.
3 Խնդրէք եւ ոչ առնուք, վասն զի չա-
րաչար խնդրէք. զի անդէն ի ցանկու-
4 թիւնս ձեր մաշեսջիք ։ Շնացողք, ո՞չ
գիտէք զի սէր աշխարհիս թշնամու-
թիւն է առ Աստուած. զի որ ոք կա-
միցի սիրել զաշխարհ, թշնամի առնէ
5 զանձն Աստուծոյ ։ Կամ թէ վայրապա՞ր
համարիցիք զոր ասէ Գիրն, [1]Առ նա-
խանձ ինչ որում փափաքէ հոգին՝՝ որ
6 բնակեաց ի մեզ. [2]Տայ զառաւել շը-
նորհսն՝՝. վասն որոյ ասէ, Տէր ամ-
բարտաւանից հակառակ կայ, տայ
շնորհս խոնարհաց ։
7 ԲԴ. Հնազանդեցարուք այսուհետեւ
Աստուծոյ. եւ կացէք հակառակ չա-
րախօսին, եւ լիցի փախստական առ
8 ի ձէնջ ։ Մերձեցարուք առ Աստուած,
եւ մերձեսցի առ ձեզ. սրբեցէք զձեռս,
մեղաւորք, եւ ուղիղ արարէք զսիրտս,
9 երկմիտք. Տառապեցարուք, սգացա-
րուք եւ լացէք. ծաղր ձեր ի սուգ
դարձցի, եւ ուրախութիւն ձեր՝ ի
10 տրտմութիւն ։ Խոնարհեցարուք առա-
ջի Տեառն եւ բարձրացուսցէ զձեզ ։
11 Մի՛ բամբասէք զմիմեանս, եղբարք.
որ բամբասէ զեղբայր իւր կամ դատի
զեղբայր իւր՝ զօրէնսն բամբասէ եւ
զօրէնսն դատի. իսկ եթէ զօրէնսն
դատիցիս, ոչ առնելի օրինացն ես, այլ՝
12 դատաւոր ։ Մի է Օրէնսդիր [3]եւ Դա-
տաւոր՝՝, որ կարօղն է փրկել եւ կորու-
սանել. դու ո՞ ես որ դատիս զընկերն ։
13 Ահաւասիկ են որ ասեն, Այսօր եւ
վաղիւ երթիցուք յայս անուն քաղաք,
եղիցուք անդ տարի մի, վաճառեսցուք
14 եւ շահեսցուք. Որք ոչ գիտէք զվա-
15 ղիւն. Որպիսի՞ ինչ իցեն կեանք ձեր,
զի իբրեւ զմրրիկ էք, որ առ սակաւ
մի երեւեալ՝ եւ ապա ապականեալ.
փոխանակ զի ասէիք, Եթէ Տէր կա-
մեսցի, եւ կեցցուք, արասցուք զայս
16 ինչ կամ զայն ։ Եւ արդ պարծիք յամ-
բարտաւանութեան ձերում. ամենայն
ինչ այսպիսի պարծանք չարութեան
17 են ։ Որ ոք գիտիցէ զբարին եւ ոչ
առնիցէ, մեղք են նմա ։

## ԳԼ. Ե

1 ԲԴ. Արդ այսուհետեւ, մեծատունք,
լացէք եւ ողբացէք ի վերայ թշուա-
ռութեանցն, որ գալոց են ի վերայ ձեր ։
2 Զի մեծութիւնք ձեր յոչինչ է, եւ
3 հանդերձք ձեր՝ կերակուր ցեցոյ ։ Եւ
արծաթ ձեր եւ ոսկի ժանգահար, եւ
ժանգ նոցա լիցի ձեզ ի վկայութիւն,
եւ կերիցէ զմարմինս ձեր իբրեւ զհուր.
4 զանձեցէք աւուրցն յետնոց ։ Ահաւա-
սիկ վարձք մշակաց որ զործեն զանդս
ձեր, [4]առ ձեզ են,՝՝ զրկեալն ի ձէնջ,
աղաղակէ, եւ բողոք հնձողացն եհաս
5 յականջս Տեառն զօրութեանց ։ Փափ-
կացայք ի վերայ երկրի եւ զբօսայք,
սնուցէք զսիրտս ձեր իբրեւ աւուր
6 սպանման ։ Զրկեցէք, սպանէք զար-
դարն, որ ոչ կայր ձեզ հակառակ ։
7 Երկայնամիտ լերուք, եղբարք իմ,
մինչեւ ի գալուստն Տեառն. ահա մշակ
երկայնամտեալ սպասէ պատուական
պտղոյն երկրի, մինչեւ առցէ [5]զկա-
8 նուխ եւ զանագան՝՝։ Երկայնամտեցէք
եւ դուք, հաստատեցէք զսիրտս ձեր.
9 զի գալուստն Տեառն մերձեալ է ։ Մի՛
[6]տրտմեցուցանէք զմիմեանս՝՝, եղբարք,
զի մի՛ դատիցիք. ահաւասիկ Դատա-
10 ւորն առ դուրս կայ ։ Օրինակ առէք,
եղբարք, չարչարանաց եւ երկայն-
մտութեան զմարգարէսն որ խօսեցան
11 յանուն Տեառն ։ Ահաւասիկ երա-
նեմք համբերողաց. զհամբերութիւնն
Յոբայ լուարուք, եւ զկատարումն
Տեառն տեսէք, զի բազմագութ է Տէր
եւ ողորմած ։

[1]Յոյնն, Առ նախանձ ինչ փափաքէ հոգին. կամ, Առ նախա՞նձ ինչ փափաքիցէ հոգին
[2]Յոյնն, Այլ տայ առաւել շնորհս
[3]Յոմանս ոչ կայ
[4]Ի Յոյնն ոչ կայ
[5]Ոմանք, զպտուղն զկանուխ և զանագան. այլք, զանձրեւն զկանուխ և զանագան
[6]Յոյնն, լինիք տրտունջ զմիմեանց

12 ԲԵ. Յառաջ քան զամենայն ինչ,
եղբարք իմ, մի՛ երդնուցուք, մի՛ յեր-
կինս, մի՛ յերկիր, մի՛ յայլ ինչ եր-
դումն, այլ եղիցի ձեր այոն՝ այո, եւ
ոչն՝ ոչ, զի մի՛ [1]ի կեղծաւորութիւն
13 ինչ" անկանիցիք: Վշտանայցէ՞ ոք ի
ձէնջ, յաղօթս կայցէ. բերկրիցի՞ ոք,
14 սաղմոս ասասցէ: Հիւանդանայցէ՞ ոք
ի ձէնջ, կոչեսցէ զերիցունս եկեղեց-
ւոյն, եւ արասցեն ի վերայ նորա ա-
ղօթս, օծցեն իւղով յանուն Տեառն.
15 Եւ աղօթքն հաւատովք փրկեսցեն
զաշխատեալն, եւ յարուսցէ զնա Տէր.
եւ եթէ մեղս ինչ իցէ գործեալ, թողցի
16 նմա: Խոստովան եղերուք միմեանց
զմեղս, եւ աղօթս արարէք ի վերայ
միմեանց որպէս զի բժշկեսջիք. քանզի
յոյժ զօրաւոր են աղօթք արդարոյ
17 յօգնականութիւն: Եղիա մարդ էր
լիբրեւ զմեզ չարչարելի. եւ յաղօթս
[2]եկաց, եւ ոչ տեղաց յերկիր զերիս
18 ամս եւ զվեց ամիս: Եւ դարձեալ ե-
կաց յաղօթս, եւ ետուն երկինք զանձ-
րեւ, եւ բուսոյց երկիր զպտուղ իւր:
19 Եղբարք իմ, եթէ ոք ի ձէնջ մոլորես-
ցի [3]ի ճանապարհէ ճշմարտութեան",
20 եւ դարձուսցէ ոք զնա, Գիտասցէ զի
որ դարձուսցէ զմեղաւորն ի մոլորու-
թեան ճանապարհէն իւրմէ, փրկեսցէ
զոգի [4]իւր ի մահուանէ եւ ծածկեսցէ
զբազմութիւն մեղաց.

# [5]ԹՈՒՂԹ

## ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՋԻՆ"

### ԳԼՈՒԽ Ա

1 ԲՋ. ՊԵՏՐՈՍ, առաքեալ Յիսուսի Քրիս-
տոսի, ընտրելոցդ՝ նժդեհից որ ի
սփիւռս Պոնտացւոց, Գաղատացւոց
եւ Կապադովկեցւոց եւ Ասիացւոց եւ
2 Բիւթանիացւոց, Ըստ կանխագիտու-
թեանն Աստուծոյ Հօր, սրբութեամբ
Հոգւոյն, ի հնազանդութիւն եւ ի հե-
ղումն արեանն Յիսուսի Քրիստոսի.
շնորհք ընդ ձեզ եւ խաղաղութիւն
բազմասցի:
3 Օրհնեալ է Աստուած եւ Հայր Տեառն
մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ ըստ
բազում ողորմութեան իւրում ծնաւ
զմեզ վերստին ի յոյսն կենդանի ի ձեռն
յարութեանն Յիսուսի Քրիստոսի ի
4 մեռելոց, Ցանեղծ եւ յանարատ եւ
յանթառամ ժառանգութիւնն որ պահ-
5 եալ է յերկինս ձեզ, Որ զօրութեամբն
Աստուծոյ պահեալ [6]էիք հաւատովք
ի պատրաստեալ փրկութիւնն, յայտնել
6 ի յետին ժամանակս. Որով ուրախ
լինիջիք որք այժմ սակաւիկ ինչ ըստ
պատշաճի իրայդ տրտմեալ էք ի պէս-
7 պէս փորձութիւնս. Զի հանդէս ձե-
րոց հաւատոցն [7]առաւել քան զոսկի
կորստական պատուական է, որ հրով
փորձեալ գտաւ" ի գովութիւն եւ ի
փառս եւ ի պատիւ ի յայտնութեանն
8 Յիսուսի Քրիստոսի, Զոր ոչն տեսէք
եւ [8]սիրեցէք, ընդ որ այժմ ոչ հայե-
ցեալք բայց [9]հաւատացէք, եւ ուրախ
էք անճառ եւ փառաւորեալ խնդու-
9 թեամբն. Ընկալեալ զկատարումն

[1]Յունն, ընդ դատաստանաւ
[2]Յունն, եկաց զի մի՛ տեղասցէ
[3]Ոմանք, ի ճշմարտութենէ
[4]ի Յունին պակասէ. Յոմանս՝ նորա
[5]Ոմանք, Թուղթ Պետրոսի Կաթողիկեայ Առա-
ջին. այլք՝ Թուղթ Պետրոսի Առաքելոյ Կա-
թողիկեայ Առաջին

[6]Կամ, էք
[7]Յունն, որ առաւել քան զոսկի կորստական,
թէպէտեւ հրով փորձեալ, պատուական է,
գտանիցի
[8]Յունն, սիրէք
[9]Յունն, հաւատայք

հաւատոցն ձերոց՝ զոգւոցն փրկու-
10 թիւն ։ Վասն որոյ փրկութեան խնդ-
րեցին եւ քննեցին մարգարէքն, որք
վասն որոյ ի ձեզ լինելոց էին շնորհքն՝
11 մարգարէանային․ Քննէին յորում եւ
յորպիսի ժամանակի ցուցանէր ի նո-
սա Հոգին Քրիստոսի, որ նախ զչար-
չարանացն Քրիստոսի վկայէր, եւ յետ
12 այնորիկ զփառացն ։ Որոց եւ յայտնե-
ցաւ իսկ զի ոչ եթէ անձանց, այլ մեզ
մատակարարք լինէին նոցին, որք
այժմ պատմեցան այնոքիւք որ աւե-
տարանեցինն ձեզ Հոգւովն Սրբով, որ
առաքէրն յերկնից․ զոր ցանկային տե-
սանել [1]գոնեայ ընդ աղօտ՝՝ հրեշտակք ։
13 Բե․ Որով պնդեալ զմէջս մտաց ձե-
րոց, զուարթացեալք, բովանդակ սպա-
սեցէք հասելոց ձեզ շնորհացն ի յայտ-
14 նութեանն Յիսուսի Քրիստոսի, Իբրեւ
զորդիս հնազանդութեան, մի՛ կեր-
պարանեալք առաջին ձերովք անգի-
15 տութեանն ցանկութեամբք․ Այլ ըստ
Սրբոյն որ կոչեաց զձեզ՝ եւ դուք
սուրբք յամենայն գնացս [1]ձեր լինիջիք ։
16 Վասն որոյ գրեալ է եթէ Եղերուք
17 սուրբք, զի ես սուրբ եմ ։ Եւ եթէ Հայր
կոչիցէք զայն որ առանց ակնառու-
թեան դատի ըստ իւրաքանչիւր գոր-
ծոց, ապա երկիւղիւ զձերոյ պանդխ-
18 տութեան ժամանակդ գնասջիք ։ Գի-
տասջիք զի ոչ ապականացու արծա-
թեղինօք եւ ոսկեղինօքն փրկեցարուք
ի ձերոց ունայնութեան հայրենատուր
19 գնացիցն, Այլ պատուական արեամբն
Քրիստոսի, իբրեւ անբիծ եւ անարատ
20 գառին․ Որ յառաջծանօթն էր նախ
քան զլինելութիւն աշխարհի, եւ երե-
ւեցաւ ի վախճան ժամանակաց վասն
21 ձեր, Որք նովաւ հաւատացէք յԱս-
տուած որ յարոյց զնա ի մեռելոց, եւ
ետ նմա փառս․ զի հաւատքն ձեր եւ
22 յոյս իցեն յԱստուած ։ Զանձինս ձեր
սրբել հնազանդութեամբ [2]ճշմարտու-
թեան, յեղբայրսիրութեան առանց
կեղծաւորութեան, ի սուրբ սրտէ սի-
23 րել սերտիւ զմիմեանս ։ Ծնեալք վե-
րստին ոչ յապականութեան սերմա-
նէն, այլ յանապականացուէն՝ կենդա-
նի եւ մշտնջենական բանիւն Աստու-
24 ծոյ ։ Քանզի ամենայն մարմին իբրեւ
զխոտ է, եւ ամենայն փառք մարդոյ
իբրեւ զծաղիկ խոտոյ․ խոտն ցամա-
25 քեցաւ եւ ծաղիկն թօթափեցաւ․ Եւ
բան Տեառն մնայ յաւիտեան, այսինքն
է բանն որ ի ձեզ աւետարանեցաւ ։

## Գլ․ Բ

1 ԳԱ․ Ի բաց թօթափել այսուհետեւ
զամենայն չարութիւն եւ զամենայն
նենգութիւն եւ զկեղծաւորութիւնս
եւ զնախանձ եւ զամենայն չարախօ-
2 սութիւն, Իբրեւ զարդի ծնեալ ման-
կունս խօսուն եւ անխարդախ կա-
թինն փափաքիցէք, զի նովաւ աճիցէք
3 [3]ի փրկութիւն, Եթէ ճաշակիցէք զի
4 քաղցր է Տէր․ Առ որ մատուցեալ,
ի վէմն կենդանի, որ թէպէտ ի մարդ-
կանէ անարգեալ, այլ առ ի յԱստու-
5 ծոյ ընտրեալ եւ պատուական է․ Եւ
դուք իբրեւ զվէմս կենդանիս շինիք
տաճար հոգեւոր, յանարատ քահա-
նայութիւն, մատուցանել զհոգեւորն
պատարագս հաճոյս Աստուծոյ ի ձեռն
6 Յիսուսի Քրիստոսի ։ Քանզի կայ իսկ
ի գրի եթէ Ահաւասիկ դնեմ ի Սիովն
վէմ ընտիր, գլուխ անկեան պատուա-
կան, եւ որ ի նա հաւատասցէ՝ մի՛ ա-
7 մաչեսցէ ։ Ձեզ այսուհետեւ հաւատա-
ցելոցդ՝ [1]վէմ պատուական, իսկ անհա-
ւատիցն՝ վէմն զոր անարգեցին շի-
8 նողքն, նա եղեւ գլուխ անկեան․ Եւ
վէմ գլորման եւ վէմ գայթակղու-
թեան, որ գայթակղին ապստամբեալք
9 ի բանէն յոր եւ եդան ։ Այլ դուք ազգ
էք ընտիր, [4]թագաւորութիւն, քա-
հանայութիւն՝՝, ազգ սուրբ, ժողո-
վուրդ սեպհական, որպէս զի [5]զձեր
առաքինութիւնսն նուիրիցէք այնմ,
որ՝՝ զձեզ ի խաւարէն կոչեաց յիւր
10 սքանչելի լոյսն ։ Որք երբեմն չժողո-
վուրդ, բայց արդ ժողովուրդ Աստու-
ծոյ․ որք չողորմեալք, այժմ ողոր-
մութիւն գտէք ։
11 Սիրելիք, աղաչեմ իբրեւ զպան-
դուխտս եւ զնժդեհս ի բաց մերժել ի
մարմնաւոր ցանկութեանցն որ զին-
12 ուորին ընդդէմ ոգւոց, Զվարս ձեր

[1] Ի Յունականն պակասէ
[2] Ոմանք, ճշմարտութեան ի ձեռն Հոգւոյն

[3] Յոմանս պակասէ
[4] Յայլս, թագաւորական քահանայութիւն
[5] Յայլս, ցուցանիցէք զառաքինութիւնս այնո-
րիկ որ

ի մէջ հեթանոսաց պարկեշտս ցուցա-
նել, զի որով բամբասիցեն զձեզ իբրեւ
զչարագործս ; ի բարւոք գործոցն ձե-
րոց զիտեալ՝ փառաւոր առնիցեն զԱս-
տուած յաւուրն այցելութեան ։
13 ԳԲ. Հնազանդ լերուք ամենայն
մարդկեղէն սահմանադրութեան վասն Տեառն,
եթէ թագաւորի՝ իբրեւ առաւել ու-
14 մեք, Եթէ դատաւորաց՝ իբրեւ ի
նմանէ առաքելոց ի վրէժխնդրութիւն
չարագործացն եւ ի գովութիւն բարե-
15 գործացն ։ Զի այսպէս են կամք Աս-
տուծոյ, բարեգործացն պապանձեցու-
ցանել զանգէտ մարդոց զանգիտու-
16 թիւն. Իբրեւ զազատս լինել, եւ մի՛
իբրեւ պատրուակ չարութեան ունել
զազատութիւնն, այլ իբրեւ Աստուծոյ
17 ծառայք ։ Զամենեսեան պատուեցէք.
զեղբայրսիրութիւն սիրեցէք. յԱս-
տուծոյ երկերուք. [1]զթագաւորս
պատուեցէք ։
18 Ծառայք հնազանդ լինել յամենայնի
երկիւղիւ տերանց, ոչ միայն բարե-
րարացն եւ հեզոցն, այլ եւ կամակո-
19 րացն ։ Զի այս՝ շնորհք [2]յԱստուծոյ են,
եթէ բարւոք ինչ մտօք տանիցի ոք
20 վշտաց" յանիրաւի ։ Քանզի զի՞նչ [3]ե-
րախտիք իցեն, եթէ յորժամ մեղան-
չիցէք՝ տանջիցիք եւ համբերիցէք. այլ
եթէ բարիս գործիցէք, չարչարիցիք
եւ համբերիցէք, այն շնորհք [4]յԱս-
21 տուծոյ են" ։ Քանզի ի դոյն իսկ կո-
չեցարուք, զի եւ Քրիստոս վասն ձեր
[5]մեռաւ, եւ ձեզ եթող օրինակ՝ զի
22 զհետ երթայցէք հետոց նորա. Որ ոչն
արար մեղս եւ ոչ գտաւ նենգութիւն
23 ի բերան նորա. Որ բամբասեալ, եւ
ոչ փոխարէն բամբասէր. չարչարեալ,
եւ ոչ սպառնայր, բայց [6]ի-
24 րաւամբք մատնէր դատաւորին". Որ
զմեր մեղս ինքնին մարմնովն վերացոյց
ի խաչափայտն, զի լիցուք զերծեալք
ի մեղաց անտի, եւ իցեմք արդարու-
թեանն կենակիցք. որոյ վիրօքն բժշկե-
25 ցայք ։ Քանզի էիք իբրեւ զոչխարս

[1]Յոյնն, զթագաւորն
[2]Յոյնն, են, եթէ խղճիւ առ Աստուած տանի-
ցի ոք վշտաց զոր կրիցէ
[3]Յոյնն, պարծանք
[4]Յոյնն, են առ Աստուծոյ
[5]Ոմանք, չարչարեցաւ
[6]Յոյնն, յանձն առնէր զանձն որում դատէն
իրաւամբք

մոլորեալս, այլ այժմ դարձարուք առ
Հովիւն եւ Տեսուչ ոգւոց ձերոց ։

ԳԼ. Գ

1 ԳԳ. Սոյնպէս եւ կանայք հնազանդ
լինել արանց իւրեանց, զի եթէ իցեն
ոմանք ապստամբք ի բանէ անտի, յա-
ռաջ կանանց գնացից եւ առանց բանի
2 իսկ շահեսցին, Դիտել [7]երկիւղիւ զձեր"
3 պարկեշտ գնացս, Որոց լինիցի ոչ ար-
տաքուստ հիւսիւք եւ ոսկեհուռ ծա-
մակալօք կամ պաճուճեալ զգեստուք
4 զարդ. Այլ ծածուկ սրտին մարդն՝
անեղծութեամբ հեզութեան եւ հան-
դարտութեան հոգւոյն, որ է առաջի
5 Աստուծոյ բազմապատիկ ։ Քանզի այս-
պէս երբեմն եւ [8]կանայք որ յուսա-
ցեալ էին յԱստուած՝ զարդարէին զան-
ձինս [9]հնազանդել իւրեանց արանց ։
6 Որպէս եւ Սառա զի հնազանդ էր Աբ-
րահամու, եւ տէր իւր կոչէր զնա,
որոյ եղերուքն դուք որդիք, [10]բարե-
գործք էին եւ ոչ կասկածէին" եւ ոչ
ի միոջէ ինչ երկիւղէ ։
7 Սոյնպէս եւ արք իմաստութեամբ
բնակեսցեն ընդ նոսա, իբրեւ տկար
անօթոյ սռնիցեն պատիւ կանանց,
իբրեւ ժառանգակցաց շնորհացն կե-
նաց, զի մի՛ խափան լիցին աղօթիցն
8 ձերոց ։ Եւ զլուխ ամենայնի՝ զի հա-
մամիտք լիջիք, համակարիք, եղբայ-
րասէրք, ագնուագութք, խոնարհք ։
9 Մի՛ չար փոխանակ չարի հատուցանել,
կամ բամբասանս ընդ բամբասանաց.
այլ զնորին հակառակն օրհնել, զի
յայս իսկ կոչեցարուք, զի զօրհնու-
թիւնն ժառանգիցէք ։
10 ԳԴ. Զի որ կամիցի զկեանս սիրել
եւ տեսանել աւուրս բարութեան,
լռեցուսցէ զլեզու իւր ի չարութենէ,
եւ զշրթունս իւր ի չխօսելոյ զնեն-
11 գութիւն. Խոտորեսցի ի չարէ եւ ա-
րասցէ զբարի, խնդրեսցէ զխաղաղու-
12 թիւն եւ երթիցէ զհետ նորա ։ Զի աչք
Տեառն ի վերայ արդարոց, եւ ականջք
նորա՝ յաղօթս նոցա. երեսք Տեառն

[7]Յոյնն, զձեր երկիւղիւ
[8]Յոյնն, սուրբ կանայք
[9]Այլօրինակ՝ հնազանդեալ
[10]Յոյնն, եթէ բարեգործք լինիցիք, և ոչ կաս-
կածիցէք

13 ի վերայ չարագործաց։ Եւ ո՞ իցէ որ
չարչարիցէ զձեզ, եթէ դուք բարւոյն
14 նախանձաւորք լինիցիք։ Այլ թէ եւ
չարչարիցիք եւս յաղագս արդարու-
թեան, երանելի էք. բայց յերկիւղէ
նոցա մի՛ երկնչիցիք եւ մի՛ խռովեսս-
15 ջիք։ Այլ զՏէր, [1]զնոյն զՔրիստոս"
սուրբ առնիջիք ի սիրտս ձեր. պատ-
րաստ լիջիք տալ պատասխանի ամե-
նայնի որ խնդրիցէ զբանն՝ որ է վասն
յուսոյն ձերոյ, [2]այլ հեզութեամբ եւ
16 երկիւղիւ. Ունիցիք բարս քաղցունս,
զի որով չարախօսիցեն զձէնջ[3] յամօթ
լիցին որք բամբասեն զձեր բարւոք
17 գնացս ի Քրիստոս։ Զի [4]լաւ է բարե-
գործաց, եթէ կամիցին ըստ Աստու-
ծոյ կամացն չարչարել, քան չարա-
18 գործացն". Զի եւ Քրիստոս մի անգամ
վասն մեղաց ի վերայ մեր [5]մեռաւ,
արդարն ի վերայ անարդարոց, զի զմեզ
մերձեցուսցէ առ Աստուած. զի թէ-
պէտեւ մեռաւ մարմնով, այլ կենդա-
19 նի է հոգւով. Որով եւ ոգւոցն որ
էին ի բանտին՝ երթեալ քարոզեաց.
20 Երբեմն ապստամբելոցն, յորժամ նե-
րէր նոցա Աստուծոյ երկայնմտու-
թիւնն յաւուրս Նոյի յորս տապանն
կազմէր, [6]յորս նուազունք, այսինքն
ոգիք իբրեւ ութ, ապրեցան ի ջրոյն.
21 Որ եւ [7]զձեզ ըստ նմին օրինակի կե-
ցուսցէ մկրտութիւնն, (ոչ զմարմնոյ
աղտն ի բաց ընկենուլ, այլ զբարւոք
մտաց հանդէս առ Աստուած,) ի ձեռն
22 յարութեան Յիսուսի Քրիստոսի. Որ է
ընդ աջմէ Աստուծոյ, երթեալ յերկինս,
ի հնազանդել նմա հրեշտակաց եւ իշ-
խանութեանց եւ զօրութեանց։

## ԳԼ. Դ

1 ԳԵ. [8]Քրիստոսի չարչարելն" մարմնով
վասն մեր, եւ դուք ի նոյն միտս վա-
ռեցարուք. զի որ չարչարի մարմնով,
2 դադարէ ի մեղաց. Զի մի՛ եւս ըստ
մարդկան ցանկութեանց, այլ ըստ
կամացն Աստուծոյ [9]կեցցէ զայլ եւս
3 ժամանակն։ Բանզի [10]բաւական է
անցեալ ժամանակն" լինելոյ կամացն
հեթանոսաց, [11]որք գնայլին" գիջու-
թեամբք, ցանկութեամբք, գինեհա-
րութեամբք, անառակութեամբք, ար-
բեցութեամբք, անօրէն կռապաշտու-
4 թեամբք։ [12]Որով օտարացեալք՝ ոչ
ընդ ձեզ վարիլն" ի նոյն անկարգու-
5 թեան զեղխութիւն, եւ հայհոյեն։ Որ
տացեն պատասխանի այնմ որ ի պատ-
րաստին ունի դատել զկենդանիս եւ
6 զմեռեալս։ Զի ի սոյն իսկ եւ մեռելոց
խոստացեալ է, զի դատեսցին ըստ
մարդկան մարմնով եւ կենդանի լիցին
ըստ Աստուծոյ հոգւով։
7 Ամենեցուն վախճան մերձեալ է.
զգաստացարուք այսուհետեւ եւ լե-
8 րուք զուարթունք յաղօթս։ Նախ քան
զամենայն սէր սերտ ունել ընդ միմ-
եանս. զի սէր ծածկէ զբազմութիւն
9 մեղաց։ Օտարասէրք լինել ընդ միմ-
10 եանս առանց տրտնջելոյ։ Իւրաքան-
չիւր ոք որպէս եւ ընկալաւ շնորհս
ինչ, ի միմեանս զնոյն մատակարարել
իբրեւ զբարւոք հազարապետս պէսպէս
11 շնորհացն Աստուծոյ։ Եթէ ոք խօսիցի,
իբրեւ զԱստուծոյ պատգամս. եթէ ոք
մատակարարիցէ, իբրեւ ի զօրութենէ
զոր շնորհէ Աստուած. զի յամենայնի
փառաւորեսցի Աստուած ի ձեռն Յի-
սուսի Քրիստոսի. որում փառք եւ
զօրութիւն յաւիտեանս յաւիտենից։
Ամէն։
12 ԳԶ. Սիրելիք, մի՛ օտարոտի համա-
րել զեռանդն ինչ որ ի փորձութիւն
ձեզ լինիցի, որպէս թէ օտար ինչ իրք
13 ձեզ դիպիցին. Այլ իբրեւ հաղորդեալք
Քրիստոսի չարչարանացն ուրախ լի-
նիջիք, զի եւ ի յայտնութեան փառաց
14 նորա ցնծացեալք բերկրեսջիք։ Իսկ
եթէ նախատիցիք եւս վասն անուանն
Քրիստոսի, երանելի էք. զի փառացն
[2]եւ զօրութեան" [13]անունն եւ Աստուծոյ

---

[1]Ոմանք, զԱստուած.
[2]Յունարէն պակասէ
[3]Ոմանք յաւելուն, իբրեւ զչարագործս
[4]Յոյնն, լաւ է բարիս գործեալ, եթէ կամք իցեն Աստուծոյ, չարչարել, քան չար գործեալ
[5]Բազումք, չարչարեցաւ
[6]Յոյնն, յորում
[7]Ոմանք, զմեզ այժմ
[8]Կամ, Եւ զի Քրիստոս չարչարեցաւ

[9]Յոյնն, կեցցէ ի մարմնի
[10]Ոմանք, բաւական է մեզ անցեալ ժամանակն կենաց
[11]Կամ, որ գնայաք
[12]Յոյնն, Զայն իմն օտարոտի համարին զի ոչ վարիք ընդ նոսա
[13]Ի Յունարէն պակասէ

15 Հոգին ի վերայ ձեր հանգուցեալ է[1]: Մի՛
ոք ի ձէնջ չարչարեսցի իբրեւ ղսպա-
նող, կամ իբրեւ գող, կամ իբրեւ
գչարագործ, կամ իբրեւ զօտարատե-
16 սուչ: Ապա եթէ իբրեւ զքրիստոնեայ՝
մի՛ ամաչեսցէ, այլ փառաւոր արասցէ
17 զԱստուած [2]անուամբս այսուիկ": Զի
ժամանակ է սկիզբն լինելոյ դատաս-
տանին ի տանէն Աստուծոյ. զի եթէ
նախ ի մէնջ, իսկ զի՞նչ կատարած իցէ
այնոցիկ որ ոչ հաւանեցան Աստուծոյ
18 աւետարանին: Եւ եթէ արդարն հա-
զիւ կեցցէ, իսկ ամբարիշտն եւ մե-
19 ղաւորն ո՞ւր գտանիցի: Որպէս զի որ
չարչարիցին ըստ Աստուծոյ կամացն՝
հաւատարիմ Հաստչին աւանդեսցեն
զիւրեանց ոգիս բարերարութեամբք:

## ԳԼ. Ե

1 ԳԽ. [3]Զերիցունս այսուհետեւ աղա-
չեմ, իբրեւ ղերիցակից եւ վկայ չար-
չարանացն Քրիստոսի, որ եւ հաղորդ-
2 ձեալ փառացն յայտնելոյ հաղորդ. Ա-
րածեցէք՝ որ ի ձեզ հօտդ է Աստուծոյ,
վերակացու լինել մի՛ իբրեւ ակամայ,
այլ կամաւ [4]ըստ Աստուծոյ". մի՛ ղօ-
չաքաղութեամբ, այլ յօժարութեամբ.
3 Մի՛ իբրեւ տիրելով վիճակացն, այլ
4 լինել օրինակ հօտին. Զի յերեւել Հով-
ուապետին ընդունիջիք զանթառամ
փառաց պսակն:
5 Սոյնպէս եւ, երիտասարդք, հնա-
զանդ լերուք ծերոց. ամենեքին ընդ
միմեանս զխոնարհութիւն ունիցիք.
զի Աստուած ամբարտաւանից հակա-
ռակ կայ, տայ շնորհս խոնարհաց:
6 Խոնարհեցարուք ընդ հզօր ձեռամբն
Աստուծոյ, զի զձեզ բարձրացուսցէ
7 ի ժամանակի: Զամենայն հոգս ձեր
ընկեցէք ի նա, զի նա է որ հոգայ
վասն ձեր:
8 ԴԱ. Արթուն լերուք, հսկեցէք, զի
ոսոխն ձեր Սատանայ իբրեւ զառեւծ
գոչէ, շրջի եւ խնդրէ թէ զո՛ կլանիցէ:
9 Որում ի դիմի հարկանիցիք հաստա-
տեալք հաւատովք. գիտասջիք զնոյն
անցս չարչարանաց եղբայրութեան ձե-
րոյ յաշխարհի յանձինս կատարեալ:
10 Եւ Աստուած ամենայն շնորհաց որ
կոչեաց [5]զձեզ յիւր ի յաւիտենական
ի փառսն Քրիստոսիւ Յիսուսիւ, ո-
րում փոքր մի եղերուք չարչարակիցք,
նա կազդուրեսցուսցէ, կարողացուսցէ,
11 հաստահիմն [6]արասցէ: Նմա իշխանու-
թիւն եւ փառք յաւիտեանս: Ամէն:
12 Ի ձեռն Սիղուանոսի հաւատարիմ
եղբօր, որպէս կարծեմ, փոքր ի շատէ
գրեցի ձեզ՝ մխիթարել եւ ի վերայ սո-
րին վկայել, զի եւ այս ճշմարիտ
շնորհք յԱստուծոյ են յոր հաստատեալ
13 կայցէք: Ողջոյն տայ ձեզ որ ի Բաբե-
լոն ընտրելակիցն [7]եկեղեցի է, եւ
14 Մարկոս որդի իմ: Ողջոյն տաջիք մի-
մեանց ի համբոյր [8]սրբութեան: Խա-
ղաղութիւն ընդ ձեզ ամենեսեան, որ
էք ի Քրիստոս Յիսուս: Ամէն:

---

[1] Ոմանք յաւելուն, թէպէտ և ի նոցանէ հայհոյի, այլ ի ձէնջ փառաւորի
[2] Ոմանք, յայսմ մասին
[3] Յոյնն, Զերիցունս որ ի ձեզ
[4] Յոմանս պակասի
[5] Ոմանք, զմեզ
[6] Ոմանք, արասցէ զձեզ
[7] Ի բազումս պակասէ
[8] Յոյնն, սիրոյ

# ԹՈՒՂԹ

## ՊԵՏՐՈՍԻ ԵՐԿՐՈՐԴ

### ԳԼՈՒԽ Ա

ԴԲ․ ՇՄԱՒՈՆ Պետրոս, ծառայ եւ ա-
ռաքեալ Յիսուսի Քրիստոսի, որոց
հանգիտապատիւ մեզ հասէքդ հաւա-
տոց յարդարութիւն Աստուծոյ մերոյ
եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի․
2 Շնորհք ընդ ձեզ եւ խաղաղութիւն
բազմասցի գիտութեամբն Աստուծոյ
եւ Յիսուսի [1]Քրիստոսի Տեառն մերոյ։
3 Որպէս ամենայն ինչ մեզ իւրոյ աս-
տուածեղէն զօրութեանն առ ի կեանս
եւ յաստուածպաշտութիւն շնորհեալ
ի ձեռն գիտութեան այնորիկ, որ կոչ-
եացն զմեզ [2]յիւր ի փառսն եւ ի վա-
4 յելչութիւն՝՝․ Որովք մեծամեծքն եւ
պատուական աւետիք պարգեւեալ են
մեզ, զի նոքիմբք աստուածեղէն բնու-
թեանն լինիցիք հաղորդակիցք, փա-
խուցեալք [3]ի ցանկութեանց աշխարհիս
5 եւ յապականութեանց՝՝։ Եւ սմին այս-
միկ զամենայն փոյթ ի մէջ առեալ՝
ձերովքն հաւատովք մատակարարես-
ջիք զառաքինութիւն, եւ առաքինու-
6 թեամբն զգիտութիւն, Եւ գիտու-
թեամբն զժուժկալութիւն, եւ ժուժ-
կալութեամբն զհամբերութիւն, եւ
համբերութեամբն զաստուածպաշտու-
7 թիւն, Եւ աստուածպաշտութեամբն
զեղբայրսիրութիւն, եւ եղբայրսիրու-
8 թեամբն զսէր։ Զայսոսիկ ձեր յանձին
կալեալ եւ ի սոյն յաճախեալ՝ ոչ դա-
տարկս եւ անպտուղս հաստատիցեն
զձեզ ի Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
9 տոսի գիտութիւնն։ Իսկ յոր ոչն իցեն
սոքա մերձ՝ կոյր է եւ զաչացու․ ի
մոռացօնս դարձուցեալ զսրբութիւն
10 առաջնոց իւրոցն յանցանաց։ Վասն
որոյ, եղբարք, առաւել փութասջիք
զի [1]բարեացն գործովք՝՝ հաստատուն
զձեր կոչումնն եւ զընտրութիւն պա-
հիցէք․ զայս արարեալ՝ ոչ երբեք յան-
11 ցանիցէք․ Զի այսպէս առատապէս
շնորհեսցի ձեզ մուտ ի յաւիտենական
արքայութիւն Տեառն մերոյ եւ Փրկչին
Յիսուսի Քրիստոսի։
12 ԴԳ․ Որով պատրաստ իցեմ միշտ ձեզ
յիշեցուցանել վասն սոցին, առաւել
եւս՝ գիտակացն եւ հաստատելոցն եկ-
13 եալ հասեալ ճշմարտութեանն։ Քանզի
իրաւունս համարիմ, մինչդեռ եմ ի
մարմնի աստ, զարթուցանել զձեզ յի-
14 շատակօք։ Գիտեմ թէ վաղվաղակի է
լինելոց մերկանալ յինէն մարմնոյս,
որպէս եւ Տէր մեր Յիսուս Քրիստոս
15 եցոյց ինձ։ Եւ փութամ ձեպիմ միշտ
[4]զձեզ յորդորել՝՝, զի եւ յետ իմոյ ե-
լանելոյ յաշխարհէս առնիցէք զյիշա-
16 տակս այսոցիկ։ Քանզի ոչ եթէ պա-
ճուճեալ ինչ առասպելաց զհետ երթեալ
ցուցաք ձեզ զՏեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի զզօրութիւն եւ զգալուստն,
այլ [4]մեզէն եղեալ ականատեսք նորա
17 մեծութեանն։ Քանզի առեալ յԱստու-
ծոյ Հօրէ զփառս եւ զպատիւ, յեկեալ
յայնպիսի բարբառոյ ի մեծվայելչու-
թեան փառաց անտի, եթէ Դա է Որդի
18 իմ սիրելի ընդ որ ես հաճեցայ։ Եւ
զայս բարբառ մեք իսկ լուաք եկեալ
յերկնից որ ընդ նմա իսկ էաք ի սուրբ
19 լերինն։ Եւ ունիմք հաստատագոյն
զբանն մարգարէական, որում եթէ
անսայցէք, բարւոք առնէք, իբրեւ
ճրագի որ տայցէ լոյս ի խաւարչտին

[1] Ի բազումս պակասէ
[2] Ոմանք, փառօք և զօրութեամբ
[3] Ոմանք, յապականութենէ որ յաշխարհի ցան-
կութեամբ

[4] Ի Յունին պակասէ

տեղւոջ, մինչեւ տիւն լուսաւորեսցէ
եւ արուսեակն ծագեսցէ ի սիրտս ձեր։
20 Դդ․ Բայց նախ զայս գիտակ լինի-
ջիք, զի ամենայն մարգարէութիւն
21 իւրոց դրոց լուծումն ոչ ունի։ Քանզի
ոչ եթէ ըստ կամաց մարդկան տուաւ
մարգարէութիւն երբեք, այլ ի Հոգ-
ւոյն Սրբոյ կրեալք՝ խօսեցան [1]մարդիկ
յԱստուծոյ"։

Գլ․ Բ

1 Լինէին եւ սուտ մարգարէք ի ժողո-
վրդեանն, որպէս եւ այժմ ի ձեզ լինի-
ցին սուտ վարդապետք, որք ածցեն
մուծանեն հերձուածս կորստեան, եւ
[2]զոր Տէր գնեաց զնոսա" ուրացեալ, ա-
ծեն ի վերայ անձանց զարագահաս կո-
2 րուստ։ Եւ բազումք անկեալ երթիցեն
զհետ նոցա անառակութեանցն, վասն
որոյ ճշմարտութեանն ճանապարհ
3 հայհոյեսցի։ Եւ ագահութեամբ մտա-
ցածին բանիւք առնիցեն զձեզ վաճա-
ռանգիս․ որոց դատաստանն ի բնէ
ոչ դադարիցէ, եւ կորուստն նոցա
ոչ նիրհէ։
4 Զի եթէ ի հրեշտակսն յանցուցեալս
Աստուած ոչ խնայեաց, այլ խաւարին
կապանօք արկեալ ի տարտարոսն՝ ետ
5 պահել ի դատաստան․ Նա՝ եւ ոչ ի
սկզբանն աշխարհի խնայեաց․ բայց
զութերորդն զՆոյ, զարդարութեանն
քարոզ, պահեաց ի ջրհեղեղէ աշխարհի
6 ամբարշտելոցն ածեալ․ Եւ զքաղաքս
Սոդոմացւոցն եւ Գոմորացւոց դար-
ձուցեալ յաճիւն՝ դատեցաւ, օրինակ
առ յապայ ամբարշտելոցն կացուցա-
7 նէր։ Եւ զարդարն զՂովտ ձանձրա-
ցեալ յանկարգ գիջութեան գնացից՝
8 փրկեաց․ Քանզի ականատես եւ ա-
կանջալուր արդարն բնակեալ ի մէջ
նոցա, օր ըստ օրէ զիւր սուրբ ոգին
նոցա անօրէն գնացիւքն տանջէր։
9 Դե․ Գիտէ Տէր զաստուածապաշտս
փրկել ի փորձութենէ, եւ զանիրաւս
պահել ի տանջանս աւուրն դատաս-
10 տանի։ Մանաւանդ որ զհետ մարմնոյ
պղծալից ցանկութեանց իցեն երթեալ․
արհամարհողք տէրութեանն, ժպիրհք,
յանդգունք, չզանգիտեն զփառս հայ-
11 հոյել․ Ուր հրեշտակք զօրութեամբ
եւ կարողութեամբ քան զնոսա մե-
ծամեծք չածեն զնոքօք ի Տեառնէ
12 զհայհոյութեանն դատաստան։ Այլ սո-
քա իբրեւ զանխօս անասունս ըստ
բնածին բարուցն յեղծումն եւ յապա-
կանութիւն, որոց չենն գիտակ՝ հայ-
հոյեն, յապականութեան իւրեանց [3]եւ
13 ապականեսցին, Տանջեալք ի վար-
ձուցն" անիրաւութեան․ որ ցանկու-
թիւն զաւուրն փափկութիւն համա-
րին․ բծկանք, արատաւորք, փափ-
կացեալք ի պատիրս իւրեանց՝ լինել
14 ձեզ խրախճանակիցք․ Աչս ունին համ-
գոյնս պոռնկաց, անդադարս ի մեղաց,
պատրեն զանձինս յողդողդաց․ որ ու-
նին սիրտ հարեալ զագահութեան,
15 մանկունք անիծից։ Թողեալ զուղղորդ
ճանապարհն՝ մոլորեցան, զհետ երթեալ
ճանապարհին Բաղաամայ Բէովրեան՝
[4]զվարձս անիրաւութեան սիրեցին"․
16 Որ կշտամբանս իւրոյ անօրէնութեանն
[5]ստացաւ զէշն անխօսուն․ մարդկե-
ղէն" բարբառովն բարբառեալ՝ արգել
17 զմարգարէին [6]զանօրէնութիւնն։ Այսո-
պիսիքն են աղբերք անջրդիք եւ մէգք
վարեալք ի մրրկէ, որոց աղջամուղջք
խաւարին յաւիտեան պահեալ կան։
18 Քանզի մեծաբանս ունոտեաց բարբառե-
եալ պատրեն գիջութեամբք, ցանկու-
թեամբք մարմնոյ զայնոսիկ՝ որ սակաւ
փախչիցեն յայնցանէ՝ որ ի մոլորու-
19 թեանն շրջիցին․ Նոցա ազատութիւն
խոստանան, եւ ինքեանք ապականու-
թեանն ծառայք են․ զի որով իւիք եւ
20 յաղթիցի ոք, նորին եւ ծառայ է։ Զի
եթէ փախուցեալք ի պղծութեանց աշ-
խարհի՝ գիտութեամբ Տեառն մերոյ եւ
Փրկչին Յիսուսի Քրիստոսի, եւ դար-
ձեալ ընդ նոյնս չաղեալք պատիցին,
եղեւ նոցա վախճանն չար քան զա-
21 ռաջինն։ Զի լաւ էր նոցա եթէ բնաւ
իսկ չէր ծանուցեալ զարդարութեանն
ճանապարհ, քան, զի ծանեան եւ յետս
կացին ի սուրբ պատուիրանէն որ նո-
22 ցա աւանդեցաւ։ Եկեալ ի դէպ նոցա
ճշմարիտ առակին զգօնութեան, եթէ
Շուն դարձայ անդրէն ի փսխած իւր,
եւ խոզ լուացեալ՝ ընդ տիղմ թաւալեալ։

---

[1]Ոմն․, մարդիկ սուրբք Աստուծոյ [2]Յոյն, որ գնեացն զնոսա զՏէրն [3]Բազում, ապականեսցին, (13) ընկալեալք վարձս [4]Բազում, որ զվարձս անիրաւութեան սիրեաց [5]Յոյն, ստացաւ․ էշն անխօսուն մարդկեղէն [6]Յոյն, զանմտութիւնն

## ԳԼ. Գ

1 ԴՁ. Զայս [1]ձեզ, սիրելիք, երկրորդ
թուղթ գրեմ, որով զարթուցից ի յի-
2 շատակ զհաստատուն միտս ձեր, Յի-
շել զյառաջագոյն ասացեալ պատգամս
ի սրբոց մարգարէից եւ յառաքելոցն
ձերոց, զպատուէրս Տեառն եւ Փրկչին։
3 Բայց զայս նախ գիտասջիք, զի յա-
ւուրս յետինս եկեսցեն արհամարհողք,
այպանողք, որ ըստ իւրեանց ցան-
4 կութեանցն գնայցեն. Եւ ասիցեն,
Ո՞ւր են աւետիք գալստեան նորա.
զի յորմէ հետէ հարքն ննջեցին, ամե-
նայն ինչ նոյնպէս կայ միայն ի սկզբանէ
5 արարածոց։ Եւ զայն մոռացեալ լիցէ
նոցա, որք զայն կամին, եթէ եր-
կինք եղեն ի սկզբանէ, եւ երկիր ի
ջրոց եւ [2]ջուրք հաստատեալ կան բա-
6 նիւն Աստուծոյ. Վասն որոյ երբեմն
աշխարհ ջրհեղեղաւ ապականեալ կոր-
7 եաւ։ Եւ այժմ երկինք եւ երկիր նո-
վին բանիւ գանձեալ են, հրոյ պահ-
եալք յօրն դատաստանի եւ կորստեան
8 ամբարիշտ մարդկան։ Եւ այս եւս մի՛
լիցի ի ձէնջ ծածկեալ, սիրելիք, զի
մի օր Տեառն իբրեւ զհազար ամ է,
9 եւ հազար ամ՝ իբրեւ զմի օր։ Ոչ յա-
մեցուսցէ Տէր զաւետիսն, որպէս ո-
մանք յամր համարին, այլ երկայնա-
միտ լինի առ [3]ձեզ. քանզի ոչ կամի
եթէ ոք կորիցէ, այլ զամենեցուն հա-
սանել յապաշխարութիւն։
10 ԴԷ. Այլ եկեսցէ օր Տեառն իբրեւ
[4]զգող, յորում երկինք տագնապաւ
անցցեն, եւ բնութիւնք հրով կիզեալ
լուծցին, եւ երկիր եւ որ միանգամ
11 ի նմա գործք [5]գտանիցին։ Եւ ի լու-
ծանել այսպէս այսր ամենայնի, որ-
պիսի՞ ինչ պարտ իցէ ձեզ գտանել,
այլ սուրբ եւ աստուածապաշտ կար-
12 գաւ ակն ունել Եւ փութալ հասանել
գալստեան աւուրն Տեառն. յորում
երկինք հրայրեացք լուծանիցին, եւ
13 բնութիւնք հրդեհեալ հալիցին։ Նորոյ
երկնից եւ նորոյ երկրի ըստ աւետ-
եացն հայեցեալ սպասեմք, յորս ար-
դարութիւնն բնակէ։
14 Վասն որոյ, սիրելիք, այսոցիկ
սպասեալ, փոյթ յանձին ունիջիք ան-
բիծք եւ անարատք գտանել նմա՝ ի
15 խաղաղութիւն. Եւ զՏեառն երկայն-
մտութիւնն փրկութիւն համարեսջիք.
զոր օրինակ եւ սիրելի եղբայրն մեր
Պաւղոս ըստ շնորհելոյ իմաստութեանն
16 նմա [6]յԱստուծոյ գրեաց ձեզ. Որպէս
եւ յամենայն իսկ թուղթսն խօսի վասն
այսոցիկ. յորս գտանի ինչ ինչ դժուա-
րիմաց, զոր անուսմունքն եւ յող-
դողդքն կամակորեն, որպէս եւ զա-
մենայն իսկ գիրս առ իւրեանց ան-
17 ձանցն կորուստ։ Դուք այսուհետեւ,
սիրելիք, իբրեւ զկանխագէտս զգու-
շասջիք, զի մի՛ անառակ մոլորու-
թեամբն զզածեալք՝ անկանիջիք [7]յաս-
18 տեաց հաստատութեանն։ Աճեցէք
շնորհօք եւ գիտութեամբն Տեառն մե-
րոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի.
նմա փառք եւ՛ այժմ եւ՛ յօրն յաւիտե-
նից։ Ամէն։

[1] Յօյնն, ձեզ այժմ
[2] Յօյնն, ջուրբք
[3] Ոմանք, մեզ
[4] Ոմանք, զգող ի գիշերի
[5] Ոմանք, այրեսցին
[6] Ի Յունէն պակասէ
[7] Յօյնն, յանձանց հաստատութենէ



# ԹՈՒՂԹ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՋԻՆ[1]



## ԳԼՈՒԽ Ա

1 ԵԱ. Որ էրն ի սկզբանէ, զորմէ լուաքն,
որում ականատեսն իսկ եղեաք, ընդ
որ հայեցաքն, եւ ձեռք մեր շօշափեցին
2 ի վերայ Բանին կենաց. (Եւ կեանքն
յայտնեցան, եւ տեսաք եւ վկայեմք
եւ պատմեմք ձեզ զյաւիտենական կե-
նացն, որ էրն առ Հօր եւ երեւեցաւ
3 մեզ.) Զոր տեսաքն եւ լուաք, պատ-
մեմք եւ ձեզ, զի եւ դուք հաղորդու-
թիւն ունիցիք ընդ մեզ, եւ մեր հա-
ղորդութիւնն իցէ ընդ Հօր եւ ընդ
Որդւոյ նորում Յիսուսի Քրիստոսի։
4 Եւ զայս գրեմք ձեզ, զի ձեր ուրա-
խութիւնն կատարեալ իցէ։
5 Եւ այս են աւետիք զոր լուաք առ
ի նմանէ եւ պատմեմք ձեզ, զի Աս-
տուած լոյս է, եւ խաւար ի նմա չիք
6 եւ ոչ մի։ Եթէ ասիցեմք եթէ Հաղոր-
դութիւն ունիմք ընդ նմա եւ ի խա-
ւարի շրջիցիմք, ստեմք եւ ոչ առնեմք
7 զճշմարտութիւնն։ Իսկ եթէ ընդ լոյս
գնայցեմք, որպէս նա ի լոյս է, հա-
ղորդութիւն ունիմք ընդ միմեանս, եւ
արիւնն [2]Յիսուսի Որդւոյ նորա սրբէ
8 զմեզ յամենայն մեղաց։ Եթէ ասիցեմք
եթէ Մեղս ինչ մեք ոչ ունիմք, զան-
ձինս խաբեմք, եւ ճշմարտութիւն ի մեզ
9 ոչ գոյ։ Ապա եթէ խոստովան լինիցիմք
զմեղս մեր, հաւատարիմ է նա եւ ար-
դար առ ի թողուլ մեզ զմեղս մեր, եւ
սրբել զմեզ յամենայն անիրաւութենէ։
10 ԵԲ. Եթէ ասիցեմք, եթէ Ոչինչ մե-
ղաք, սուտ առնեմք զնա, եւ բանն
նորա ոչ է ի մեզ։

[1]Ոմ-ն+, Թուղթ Յովհաննու կաթողիկեայ Ա-
ռաջին. այլ+, Թուղթ Յովհաննու Առաքելոյ
կաթողիկեայ Առաջին
[2]Ոման+, Յիսուսի Քրիստոսի

## ԳԼ. Բ

1 Որդեակք իմ, զայս գրեմ ձեզ զի մի՛
մեղիցէք. եւ եթէ մեղիցէ ոք, ունիմք
բարեխօս առ Աստուած զՅիսուս Քրիս-
2 տոս, զարդարն [3]եւ զանարատ". Եւ
նա է քաւութիւն մեղաց մերոց, եւ
ոչ եթէ մերոցն միայն, այլ եւ ամե-
նայն աշխարհի։
3 Եւ յայսմիկ գիտեմք եթէ ծանեաք
զնա, եթէ զպատուիրանս նորա պա-
4 հիցեմք։ Որ ասիցէ եթէ Ծանեայ զնա,
եւ զպատուիրանս նորա ոչ պահիցէ,
սուտ է եւ ճշմարտութիւն ի նմա ոչ
5 գոյ։ Իսկ որ պահէ զբան նորա, ար-
դարեւ ի նմա կատարեալ է սէրն Աս-
տուծոյ. այսուիկ ճանաչեմք եթէ ի
6 նմա եմք։ Որ ասիցէ ի նմա բնակել՝
այնպէս պարտի գնալ, որպէս եւ նայն
գնաց։
7 ԵԳ. [4]Սիրելիք, ոչ եթէ նոր ինչ
պատուիրան գրեմ ձեզ, այլ զհին պատ-
ուիրանն զոր ի սկզբանէ ունէիք. եւ
հին պատուիրան բանն է զոր [5]լուա-
8 րուք։ Դարձեալ նոր պատուիրան
գրեմ ձեզ որ է ճշմարիտ ի նմա եւ
ի ձեզ. զի խաւարն անցանէ, եւ լոյսն
9 ճշմարիտ արդէն իսկ երեւի։ Որ ասէ
եթէ ի լոյսն իցէ եւ զեղբայր իւր ա-
տիցէ, [6]սուտ է եւ" ի խաւարի է տա-
10 կաւին։ Որ սիրէ զեղբայր իւր՝ ի լոյս
բնակէ, եւ գայթակղութիւն ի նմա
11 չիք. Իսկ որ ատեայ զեղբայր իւր՝ ի
խաւարի է, եւ ընդ խաւար շրջի, եւ
ոչ գիտէ յո երթայ, զի խաւարն կու-
րացոյց զաչս նորա։

[3]Ի Յոյնն պակասէ
[4]Ոմ-ն+, Եղբարք
[5]Ոման+, լուարուք ի սկզբանէ
[6]Ի բազումս պակասէ

12 Գրեմ ձեզ, որդեակք, զի թողեալ
են ձեզ մեղքն ձեր վասն անուան նո-
13 րա։ Գրեմ ձեզ, հարք, զի ծանեայք
դուք զայն որ ի սկզբանէն է։ Գրեմ
ձեզ, երիտասարդք, զի յաղթեցէք
14 դուք չարին։ Գրեցի ձեզ մանկունք,
զի ծանեայք դուք զՀայրն։ Գրեցի
ձեզ, հարք, զի ծանեայք դուք զայն
որ ի սկզբանէն է։ Գրեցի ձեզ, երի-
տասարդք, զի էք դուք հզօրացեալք,
եւ բանն Աստուծոյ ի ձեզ բնակէ, եւ
15 յաղթեցէք դուք չարին։ Մի՛ սիրէք
զաշխարհս, եւ մի՛ որ ինչ յաշխարհի
16 է։ Եթէ ոք սիրէ զաշխարհ, ոչ է ի
նմա սէր Հօր, զի ամենայն որ ինչ
յաշխարհի է՝ ցանկութիւն [1]է մարմնոյ
եւ ցանկութիւն [1]է աչաց եւ ամբար-
տաւանութիւն աստի կենացս, [1]որ չէ
առ ի Հօրէ, այլ յաշխարհէ աստի է։
17 Եւ աշխարհս անցանէ եւ [2]ցանկու-
թիւնն, իսկ որ առնէ զկամս Աստու-
ծոյ՝ մնայ յաւիտեան։
18 ԵԴ. Որդեակք, յետին ժամանակ է,
եւ որպէս լուարուք եթէ Նեռն գալոց
է, եւ արդէն իսկ նեռինք բազումք
եկեալ են, որով մարթեմք իմանալ
19 եթէ յետին ժամանակ է։ Առ ի մէնջ
ելին, այլ ոչ էին ի մէնջ. զի եթէ ի
մէնջ էին, ապա առ մեզ մնային. այլ
զի յայտնի լինիցին եթէ ոչ էին ամե-
20 նեքեան նոքա ի մէնջ։ Եւ դուք օ-
ծութիւն ունիք առ ի Սրբոյն, եւ գի-
21 տէք [3]ամենեքին։ Ոչ գրեցի ձեզ եթէ
ոչ գիտէք զճշմարտութիւնն, այլ թէ
գիտէք զնա եւ թէ՝ զի ամենայն ստու-
թիւն ոչ է ի ճշմարտութենէ անտի։
22 Իսկ ո՞ իցէ սուտ, եթէ ոչ՝ որ ուրա-
նայ եթէ Յիսուս չէ Քրիստոսն. նա
իսկ է Նեռն, որ ուրանայ զՀայր եւ
23 զՈրդի։ Ամենայն որ ուրանայ զՈրդի՝
եւ ոչ զՀայր ընդունի. [4]իսկ որ խոս-
տովանի զՈրդի՝ նա եւ զՀայր ընդու-
24 նի։՝՝ Դուք զոր լուարուքն ի սկզբանէ՝
ի ձեզ բնակեսցէ. զի եթէ ի ձեզ բնա-
կեսցէ զոր ի սկզբանէն լուարուք, եւ
դուք յՈրդի եւ ի Հայր բնակեսջիք։
25 Եւ այս են աւետիքն զոր աւետարան-
եաց նա մեզ, զկեանսն յաւիտենա-
կանս։

[1]Ի Յ[illegible] պակասէ
[2]Յայլս, ցանկութիւն նորա
[3]Ոմանք, զամենայն
[4]Յոմանս պակասէ

26 ԵԵ. Զայս գրեցի ձեզ, զի մի՛ ոք
27 զձեզ մոլորեցուցանիցէ։ Եւ դուք օ-
ծութիւնն զոր ընկալարուք ի նմանէ՝
բնակեսցէ ի ձեզ. եւ չէ ինչ պիտոյ
եթէ ոք զձեզ ուսուսցէ, այլ որպէս
[5]զի նորա օծութիւնն ուսուցանիցէ՝՝
զձեզ վասն ամենայնի, եւ ճշմարիտ է
եւ չէ սուտ. եւ որպէս ուսոյց զձեզ,
[6]կայք ի նմա։
28 Եւ այժմ, որդեակք, կացէք ի նմին,
զի եթէ յայտնեսցի, ունիցիմք համար-
ձակութիւն, եւ մի՛ ամաչեսցուք ի
29 նմանէ ի գալստեան նորա։ Զի եթէ
գիտիցէք եթէ արդար է նա, իմասջիք
եթէ ամենայն որ առնէ զարդարու-
թիւն՝ առ ի նմանէ է ծնեալ։

ԳԼ. Գ

1 Տեսէք, որպիսի՛ սէր շնորհեաց մեզ
Հայր, զի որդիք Աստուծոյ կոչեսցուք
մեք. վասն այսորիկ աշխարհ ոչ ճա-
նաչէ զմեզ, քանզի ոչ ծանեաւ զնա։
2 ԵԶ. Սիրելիք, այժմ որդիք Աստու-
ծոյ եմք, եւ չեւ եւս է յայտ եթէ զինչ
լինելոց իցեմք. գիտեմք, զի յորժամ
նա յայտնեսցի, նման նմա լինելոց
եմք, զի տեսանելոց եմք զնա որպէս
3 եւ էն։ Եւ ամենայն որ ունի զայս
յոյս [7]յանձին՝ սրբէ զանձն իւր, որպէս
4 եւ նայն սուրբ է։ Ամենայն որ զմեղս
գործէ, նա եւ զանօրէնութիւն առնէ,
եւ ինքն իսկ մեղքն անօրէնութիւն է։
5 Եւ [8]գիտեմք զի նա յայն սակս յայտ-
նեցաւ, զի [9]զմեղս բարձցէ, եւ ի նմա
6 մեղք ոչ են։ Ամենայն որ ի նա է հաս-
տատեալ՝ ոչ մեղանչէ. եւ ամենայն
որ մեղանչէ՝ ոչ ետես զնա եւ ոչ
7 ծանեաւ զնա։ Մանկունք, մի՛ ոք
զձեզ խաբեսցէ. որ առնէ զարդարու-
թիւն, արդար է՝ որպէս եւ նայն ար-
8 դար է։ Եւ որ առնէ զմեղս՝ ի Սատա-
նայէ է, զի ի սկզբանէ Սատանայ մե-
ղանչէ. վասն այսորիկ յայտնեցաւ Որ-
դին Աստուծոյ, զի լուծցէ զգործս
9 Սատանայի։ Ամենայն որ յԱստուծոյ է
ծնեալ՝ մեղս ոչ առնէ, զի սերմն նորա
ի նմա մնայ. եւ ոչ կարէ մեղանչել,

[5]Ոմանք, օծութիւնն այն ուսուցանէ. այլք՝ Հոգի նորա ուսուցանէ
[6]Ոմանք, կացէք
[7]Յայլս, ի նմա
[8]Բազումք, գիտէք
[9]Բազումք, զմեղս մեր

10 զի յԱստուծոյ է ծնեալ։ Այսուիկ յայտ-
նի են [1]ի միմեանց որդիք Աստուծոյ
եւ որդիք Սատանայի։
Եէ. Ամենայն որ ոչ առնէ զարդա-
րութիւն՝ չէ նա յԱստուծոյ, եւ որ ոչ
11 սիրէ զեղբայր իւր. Զի այս է պատ-
ուիրանն զոր լուարուք ի սկզբանէ,
12 զի սիրեսցուք զմիմեանս։ Ոչ որպէս
Կայէնն ի չարէ անտի էր եւ սպան
զեղբայրն իւր. եւ յո՞ր սակս սպան
զնա. զի իւր գործքն չար էին, եւ
13 եղբօրն՝ բարի։ Եւ մի՛ ինչ զարմանայք,
եղբարք, եթէ աշխարհ զձեզ ատեայ։
14 Մեք գիտեմք զի փոխեցաք ի մահ-
ուանէ ի կեանս, քանզի սիրեմք զեղ-
բարս. իսկ որ ոչն [2]սիրէ, անդէն ի
15 մահու մնայ։ Ամենայն որ ատեայ զեղ-
բայր իւր՝ մարդասպան է, եւ գիտէք,
զի ամենայն մարդասպան ոչ ունի
զկեանս յաւիտենականս յանձին հաս-
16 տատեալ։ Այսուիկ գիտացաք զսէրն,
զի նա զանձն իւր եդ վասն մեր, եւ
մեք վասն եղբարց [1]մերոց պարտիմք
17 զնել զանձինս։ Որ ունիցի զկեանս
ինչ զաշխարհիս, եւ տեսանիցէ զեղ-
բայր իւր կարօտեալ իւիք, եւ փա-
կիցէ զգութս իւր առ ի նմանէ, զիա՞րդ
սէրն Աստուծոյ ի նմա իցէ բնակեալ։
18 ԶԱ. Որդեակք, մի՛ բանիւք եւ լեզ-
ուօք սիրեսցուք, այլ արդեամբ եւ
ճշմարտութեամբ։
19 Եւ այսուիկ լիցուք ծանուցեալք
եթէ ի ճշմարտութենէ անտի իցեմք,
եւ առաջի նորա արասցուք հանդէս
20 սրտից մերոց։ Եթէ ստգտանիցէն զմեզ
սիրտք մեր, այլ Աստուած մեծ է քան
21 զսիրտս մեր եւ գիտէ զամենայն։ Սի-
րելիք, եթէ սիրտք մեր զմեզ ոչ
ստգտանիցեն, համարձակութիւն ու-
22 նիմք առ Աստուած. Եւ զոր ինչ հայ-
ցեմք՝ առնումք ի նմանէ, զի զպատ-
ուիրանս նորա պահեմք, եւ զհաճոյս
23 առաջի նորա առնեմք։ Եւ այս է պատ-
ուիրան նորա, զի հաւատասցուք յա-
նուն Որդւոյ նորա Յիսուսի Քրիս-
տոսի, եւ սիրեսցուք զմիմեանս, որ-
24 պէս եւ ետ մեզ պատուէր։ Եւ որ
պահէ զպատուիրանս նորա՝ ի նմա է
հաստատեալ եւ նա ի սմա. եւ յայս-
մանէ գիտեմք եթէ բնակէ ի մեզ, ի
Հոգւոյ անտի զոր ետ մեզ։

## ԳԼ. Դ

1 ԶԲ. Սիրելիք, մի՛ ամենայն հոգւոյ
հաւատայք, այլ ընտրեցէք զհոգիսն՝
եթէ յԱստուծո՞յ իցեն. զի բազում
սուտ մարգարէք ելեալ են յաշխարհ։
2 Եւ [3]մեք այսուիկ ճանաչեմք՝՝ զՀոգին
Աստուծոյ. ամենայն հոգի որ խոս-
տովանի զՅիսուս Քրիստոս մարմնով
3 եկեալ՝ յԱստուծոյ է նա։ Եւ ամե-
նայն հոգի որ ոչ խոստովանի զՅիսուս
Քրիստոս մարմնով եկեալ՝ չէ նա յԱս-
տուծոյ, եւ այս Նեռինն է, զորմէ
լուարուք եթէ գալոց է, եւ արդէն
4 իսկ յաշխարհի է։ Դուք յԱստուծոյ
էք, որդեակք, եւ յաղթեցէք նոցա.
զի մեծ է որ ի ձեզդ է քան զայն որ
5 յաշխարհին է։ Նոքա յաշխարհէ են,
վասն այնորիկ յաշխարհէ խօսին, եւ
6 աշխարհ լսէ նոցա։ Մեք յԱստուծոյ
եմք. որ զԱստուած ճանաչէ՝ լսէ մեզ,
եւ որ չէ յԱստուծոյ՝ ոչ լսէ մեզ.
այսուիկ ճանաչեմք զՀոգին ճշմար-
տութեան եւ զհոգին խաբէութեան։
7 ԶԳ. Սիրելիք, սիրեսցուք զմիմեանս,
զի սէր յԱստուծոյ է. եւ ամենայն որ
սիրէ՝ յԱստուծոյ է ծնեալ եւ ճանաչէ
8 զԱստուած։ Եւ որ ոչն սիրէ՝ ոչ ճա-
նաչէ զԱստուած, զի Աստուած սէր է։
9 Եւ զի յայսմ երեւեցաւ սէրն Աստու-
ծոյ ի մեզ, զի զՈրդին իւր միածին
առաքեաց Աստուած յաշխարհ, զի ե-
10 ղիցուք նովաւ կենդանիք։ Յայսմ է
սէրն, ոչ զի մեք սիրեցաք զԱստուած,
այլ զի նա սիրեաց զմեզ, եւ առաք-
եաց զՈրդին իւր ի քաւութիւն մեղաց
11 մերոց։ Սիրելիք, եթէ Աստուած այս-
պէս սիրեաց զմեզ, ապա եւ մեք պար-
տիմք զմիմեանս սիրել։
12 ԶԴ. ԶԱստուած ուրուք երբեք չիք
տեսեալ. եթէ սիրեսցուք զմիմեանս,
Աստուած ի մեզ բնակէ, եւ սէր նորա
13 ի մեզ կատարեալ է։ Այսուիկ գիտեմք,
եթէ մեք ի նմա եմք բնակեալ, եւ նա՝
ի մեզ, զի ի Հոգւոյն իւրմէ ետ մեզ։
14 Եւ մեք տեսաք եւ վկայեմք, զի Հայր
առաքեաց զՈրդին իւր Փրկիչ աշխարհի։

---

[1] Ի Յոմինս պակաս
[2] Ոմանք, սիրէ զեղբայրն

[3] Բազումք, ճանաչէք

15 Որ ոք խոստովանեսցի եթէ Յիսուս է
Որդի Աստուծոյ, Աստուած ի նմա
16 բնակէ, եւ նա՝ յԱստուած։ Եւ մեք
հաւատացաք եւ ծանեաք զսէրն Աս-
տուծոյ զոր ունի առ մեզ․ Աստուած
սէր է․ եւ որ կայ ի սէրն՝ բնակեալ է
յԱստուած, եւ Աստուած ի նմա բնա-
17 կէ։ Յայսմիկ կատարեալ է սէրն ընդ
մեզ․ զի համարձակութիւն [1]ունիմք
յաւուրն դատաստանի․ զի որպէս եւ
նայն է՝ նոյնպէս եւ մեք եմք յաշխար-
18 հիս յայսմիկ։ Երկեւղ ոչ գոյ ի սէր,
այլ սէրն կատարեալ ի բաց մերժէ զեր-
կեւղն․ զի երկեւղ ընդ տանջանօք է․
իսկ որ երկնչին՝ չէ կատարեալ ի սէրն։
19 Մեք [2]սիրեսցուք զԱստուած՝՝, վասն
20 զի նա նախ սիրեաց զմեզ։ Եթէ ոք
ասիցէ եթէ Սիրեմ զԱստուած, եւ
զեղբայր իւր ատիցէ, սուտ է․ որ ոչ
սիրէ զեղբայր իւր զոր տեսանէ, զԱս-
տուած զոր ոչն տես՝ զիա՞րդ կարիցէ
21 սիրել։ Եւ զայս պատուէր ունիմք
առ ի նմանէ, զի որ սիրէ զԱստուած՝
սիրէ նա եւ զեղբայր իւր։

## ԳԼ․ Ե

1 ՁԵ․ Ամենայն որ հաւատայ եթէ Յի-
սուս է Քրիստոսն՝ յԱստուծոյ ծնեալ
է, եւ ամենայն որ սիրէ զծնողն՝ սիրէ
2 եւ զծնեալն ի նմանէ։ Այսուիկ ճա-
նաչեմք եթէ սիրեմք [3]զՈրդին Աստու-
ծոյ, յորժամ զԱստուած սիրեսցուք
եւ զպատուիրանս նորա արասցուք։
3 Քանզի այս է սէրն Աստուծոյ, եթէ
զպատուիրանս նորա պահեսցուք․ եւ
պատուիրանք նորա չեն ինչ ծանունք։
4 Զի ամենայն որ յԱստուծոյ ծնեալ է՝
յաղթէ աշխարհի․ եւ այս է յաղթու-
թիւնն որ յաղթէ աշխարհի, հաւատքն
5 մեր։ Եւ ո՞ իցէ որ յաղթիցէ աշխարհի,
եթէ ոչ՝ որ հաւատայցէ եթէ Յիսուս
է Որդի Աստուծոյ։
6 Սա է որ եկն Ջրով [4]եւ հոգւով՝՝ եւ
արեամբ, Յիսուս Քրիստոս․ ոչ Ջրով
7 միայն, այլ եւ արեամբ եւ Ջրով․ Եւ
Հոգին է որ վկայէ, զի Հոգին իսկ է
8 ճշմարտութիւն։ [5]Սոքա երեքին՝՝ են
որ վկայեն, Հոգին, Ջուրն եւ արիւնն․
9 եւ երեքին մի են։ Եթէ զմարդկան
ինչ վկայութիւն ունիցիմք, ապաքէն
Աստուծոյ վկայութիւնն մեծ իցէ․ այս
է վկայութիւնն Աստուծոյ, որ վկայ-
եաց ի վերայ Որդւոյն իւրոյ։ ՎԶ
10 ՁԶ․ Որ հաւատայ յՈրդին Աստուծոյ՝
ունի յանձին զվկայութիւնս զայս․ որ
չհաւատայ [4]Որդւոյ Աստուծոյ՝ սուտ
առնէ զնա․ քանզի չհաւատայ վկա-
յութեանն զոր վկայեաց Աստուած ի
11 վերայ Որդւոյն իւրոյ։ Եւ այս իսկ է
վկայութիւնն, զի կեանս յաւիտենա-
կանս ետ մեզ Աստուած, եւ այս են
12 կեանքն որ յՈրդին նորա են։ Որ ըն-
դունի զՈրդին, ընդունի եւ զկեանսն․
եւ որ ոչ ընդունի զՈրդին Աստուծոյ,
եւ ոչ զկեանսն ընդունի։
13 ՁԷ․ Զայս գրեցի ձեզ զի գիտասջիք
եթէ կեանս յաւիտենականս ունիք,
եւ զի հաւատայցէք յանուն Որդւոյն
14 Աստուծոյ։ Եւ այս է համարձակու-
թիւնն զոր ունիմք մեք առ նա, զի
զոր ինչ հայցեսցուք ըստ կամաց նո-
15 րա՝ լսէ մեզ։ Զի եթէ գիտիցեմք եթէ
լսէ հայցուածոցն մերոց, ապա գիտեմք
եթէ առնումք զհայցուածսն զոր հայ-
ցեմք առ ի նմանէ։
16 Եթէ ոք տեսցէ զեղբայր իւր մեղու-
ցեալ մեղս որ ոչ առ ի մահ, խնդրեսցէ
եւ տացէ նմա կեանս մեղուցելոյն ոչ
առ ի մահ․ են մեղք որ մահուչափ են,
ոչ վասն այնորիկ ասեմ եթէ [6]խնդրես-
17 ցես։ Ամենայն անիրաւութիւն մեղք
են․ եւ են մեղք որ մահուչափ [7]են։
18 Գիտեմք եթէ ամենայն որ յԱստու-
ծոյ է ծնեալ՝ ոչ մեղանչէ․ այլ որ
յԱստուծոյն է ծնեալ՝ սպահէ զանձն,
19 եւ չարն առ նա ոչ մերձենայ։ Գիտեմք
եթէ յԱստուծոյ եմք, եւ աշխարհ ա-
20 մենայն ի չարի կայ։ Եւ գիտեմք եթէ
Որդին Աստուծոյ եկն, եւ ետ մեզ
միտս զի ծանիցուք զճշմարիտն․ եւ
եմք ի ճշմարտին Որդւոյ նորա Յի-
սուսի Քրիստոսի․ [8]զի նա է ճշմարիտ
Աստուած եւ կեանք յաւիտենականս։
21 Որդեակք, պահեցէք զանձինս ի կռա-
պաշտութենէ։

[1] Բազումք, ունիցիմք
[2] Ոմանք, սիրեմք զնա․ այլք՝ սիրեմք զԱստուած
[3] Յոյնն, զորդիս
[4] Ի Բազումս պակասէ
[5] Յոյնն, Զի երեք

[6] Բազումք, խնդրեսցէ
[7] Բազումք, չեն
[8] Ի Յոյնին պակասէ

# [1]ԹՈՒՂԹ

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԵՐԿՐՈՐԴ"



1 ԷԱ. ՅԵՐԻՑՈՒԷ *առ ընտրեալդ Կիւրիա
եւ առ որդեակս իւր, զոր եսդ սիրեմ
ճշմարտութեամբ, եւ ոչ եթէ ես միայն,
այլ եւ ամենեքեան ոյք գիտակ են
2 ճշմարտութեանն. վասն [2]որոյ ճշմար-
տութեանն որ ի մեզ հաստատեալ է,
[3]զի եւ ընդ ձեզ լիցի". [2]եւ դուք յա-
3 ւիտենից ընդ մեզ իցէք:" Շնորհք, ո-
ղորմութիւն, խաղաղութիւն յԱստու-
ծոյ ի Հօրէ եւ ի Տեառնէ Յիսուսէ
Քրիստոսէ Որդւոյն Հօր, ճշմարտու-
թեամբ եւ սիրով եղիցին ընդ ձեզ:
4 Ուրախ եղէ յոյժ, զի գտի յորդե-
կացդ քոց որ գնան ճշմարտութեամբ
ըստ պատուիրանին զոր առաք ի Հօրէ:
5 Եւ այժմ աղաչեմ զքեզ, Կիւրիա, իբ-
րեւ ոչ եթէ նոր ինչ պատուիրան
գրեմ քեզ, այլ զոր ի սկզբանէն ու-
6 նէաք, զի սիրեսցուք զմիմեանս: Եւ
այս է սէրն, զի գնասցուք ըստ պատ-
ուիրանաց նորա. եւ այս է պատուի-
րանն, զի որպէս լուարուքն ի սկզբա-
7 նէ՝ ըստ նմին գնասջիք: Զի բազում
մոլորեցուցիչք ելին յաշխարհ. [4]որ ոք
ոչ խոստովանի" զՅիսուս Քրիստոս
եկեալ մարմնով, նա մոլորեցուցիչ է
եւ Նեռն:
8 ԷԲ. Զգոյշ լինիջիք անձանց զի մի՛
[5]կորուսանիցէք՝ զոր վաստակեցէքն,
այլ զի առնուցուք" բովանդակ զվարձսն:
9 Ամենայն որ յանցանիցէ եւ ոչ կայցէ ի
վարդապետութեանն Քրիստոսի՝ զԱս-
տուած ոչ ճանաչէ. որ կայ ի վարդա-
պետութեանն՝ նա եւ զՈրդին եւ
10 զՀայր ընդունի: Եթէ ոք գայցէ առ
ձեզ եւ զվարդապետութիւնս զայս ոչ
ունիցի, մի՛ ընդունիցիք զնա ի տուն,
11 եւ մի՛ ողջոյն տայցէք նմա: Որ ա-
սասցէ նմա Ողջոյն՝ կցորդ լիցի չարաց
գործոց նորա:
12 Բազում ինչ ունէի գրել առ ձեզ,
այլ ոչ կամեցայ քարտիսիւ եւ դեղով.
զի ակն ունիմ ինձէն իսկ գալ առ
ձեզ, եւ բերան ի բերան խօսել. զի
ուրախութիւնն մեր լիցէ կատարեալ:
13 Ողջոյն տան քեզ որդիք քեռ քո ընտ-
րելոյ: [6]Շնորհք ընդ ձեզ:"*

[1]Ոմանք, Թուղթ Յովհաննու Առաքելոյ Երկրորդ
[2]Ի Յունին պակասէ
[3]Բազումք, և ընդ մեզ լիցի յաւիտեան
[4]Յունն, որ ոչ խոստովանի
[5]Ոմանք, կորուսանիցեմք զոր վաստակեցաքն, այլ զի առնուցումք
[6]Ի Բազումս պակասէ



# ԹՈՒՂԹ

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԵՐՐՈՐԴ[1]



1 ԷԳ. ՅԵՐԻՑՈՒԷ առ Գայիոս սիրելի,
2 զոր ես սիրեմ ճշմարտութեամբ։ Սի-
րելի, վասն ամենայնի խնդրեմ քեզ յա-
ջողութեան եւ առողջութեան աղօթս
առնեմ. որպէս է իսկ յաջողութիւն
3 անձինդ քո։ Յոյժ ուրախ եղէ ի գալ
եղբարց եւ վկայել վկայ քոյոյ ճշմար-
տութեանդ, որպէս գնաս դու ճշմար-
4 տութեամբ։ Մեծ եւս ինչ ուրախու-
թիւն քան զայս ոչ ունիմ, զի լսեմ
եթէ իմ որդեակքն ճշմարտութեամբ
5 գնան։ Սիրելի, հաւատարիմ գործես
զայդ, զոր եթէ առնիցես առ եղբարս՝
6 զգոյն եւ առ օտարս. Որք վկայեցին
քոյոյ սիրոյդ առաջի եկեղեցւոյ. որոց
բարիս արարեալ յուղարկես արժանիս
7 Աստուծոյ։ Զի վասն [2]անուանն ելին,
եւ [3]ոչինչ յումեքէ առնուն զհեթանո-
8 սականացն՝՝։ Մեք այսուհետեւ պար-
տիմք ընդունել զայնպիսիսն, զի գոր-
ծակիցք լիցուք ճշմարտութեանն։
9 ԷԳ. Գրեցի ինչ եկեղեցւոյն. այլ որ
յառաջագահն ի նոցանէ է Դիոտրեփէս,
10 ոչ ընդունի զմեզ։ Վասն այսորիկ եթէ
եկից, յիշեցուցից զգործս նորա զոր
առնէ, բանիւք չարօք չատախօսութեան
առնէ զմեզ աչխատ. եւ ոչ այսոքիւք
շատացեալ, ոչ ինքն ընդունի զեղբարս,
եւ զայնոսիկ որ ընդունինն՝ արգելու,
11 նա՝ եւ յեկեղեցւոյ եւս հանէ։ Սիրելի,
մի՛ լինիս նմանող չարի, այլ բարւոյ.
զի որ զբարին առնէ՝ յԱստուծոյ է.
եւ որ զչարիս գործէ՝ նա ոչ ետես եր-
12 բեք զԱստուած։ ԶԴեմետրեայ վկայ-
եալ է յամենեցունց [4]եւ յեկեղեցւոյն՝՝
եւ ի ճշմարտութենէն, եւ մեք վկա-
յեմք. եւ դու գիտես զի ճշմարիտ է
մեր վկայութիւնն։
13 Բազում ինչ ունէի գրել քեզ, այլ
ոչ կամիմ [5]քարտիսիւ եւ գեղով գրել՝՝.
14 Զի ակն ունիմ ի մօտոյ իսկ տեսանել
զքեզ, եւ բերան ի բերան խօսել։
15 Խաղաղութիւն ընդ քեզ. ողջոյն տան
քեզ [6]սիրելիք. ողջոյն տաջիր սիրել-
եաց [7]մերոց իւրաքանչիւր յանուանէ։

[1] Ոմանք, Թուղթ Յովհաննու Առաքելոյ Երրորդ
[2] Ոմանք, անուան նորա
[3] Ոմանք, ոչինչ առնուլ ի հեթանոսաց
[4] Ի բազումս պակասէ
[5] Յոմանս, դեղով և եղեգամբ գրել քեզ
[6] Ոմանք, եղբարք
[7] Ի Յունէն պակասէ



# ԹՈՒՂԹ

## ՅՈՒԴԱՅԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԿԱԹՈՂԻԿԷ

1 ԻԵ. Յուդա, Յիսուսի Քրիստոսի ծա-
ռայ, եւ եղբայր Յակովբայ, [1]հեթա-
նոսաց որ՚՚ յԱստուծոյ Հօրէ էք սիրե-
ցեալք, եւ Յիսուսի Քրիստոսի պահ-
2 եալք եւ [2]ընտրեալք, Ողորմութիւն
ձեզ եւ խաղաղութիւն եւ սէր բազ-
մասցի։
3 Սիրելիք, զամենայն փոյթ յանձին
կալեալ գրել ձեզ վասն մերոյ հասա-
րակաց փրկութեանն, հարկ յանձին
կալայ գրել ձեզ, եւ աղաչել զի ճգնի-
ցիք ի վերայ հաւատոյն, որ միանգամ
4 աւանդեցաւն սրբոց։ Քանզի սպրդե-
ցին մտին ոմանք, որ յառաջագոյն իսկ
[3]կատարեալ էին ի սոյն դատաստան,
ամբարիշտք, որ զԱստուծոյ մերոյ
շնորհսն դարձուցին յանկարգութիւն.
եւ զմի միայն [4]զԻշխանն եւ զՏէր մեր
Յիսուս Քրիստոս ուրացեալք։
5 Յիշեցուցանել ձեզ այսուհետեւ կամ
է ինձ որ գիտէքդ [5]զամենայն, զի
Աստուած միանգամ՚՚ զժողովուրդն
փրկեաց յԵգիպտոսէ, երկրորդ անգամ
6 զանհաւատսն կորոյս։ Եւ զհրեշտակս
որ ոչ պահեցին զիւրեանց իշխանու-
թիւնն, այլ թողին զիւրեանց բնակու-
թիւնն, ի դատաստանս մեծի աւուրն
մշտնջենաւոր կապանօք պահեաց ի
7 խաւարի։ Որպէս Սոդոմն եւ Գոմոր
եւ որ շուրջ զնոքօք քաղաքքն, որ
ըստ նմին օրինակի պոռնկեցան զհետ
ընկերացն մարմնոց, կան առաջի օ-
րինակ՝ զյաւիտենական հրոյն ընկալ-
8 եալ զդատաստան։ Ըստ նմին օրինակի
եւ սոքա իբրեւ քնով զանգաչեալք՝
զմարմին պղծեն, զտէրութիւնս քա-
9 մահեն, զփառսն հայհոյեն։ Ուր Մի-
քայէլ հրեշտակապետն յորժամ բան-
սարկուն Սատանայի վիճեալ տայր պա-
տասխանի վասն Մովսիսեանն մարմ-
նոյ, ոչ ժպրհեցաւ հայհոյութեանն
դատաստանի հանդուրժել. այլ ասէ,
10 Սաստեսցէ ի քեզ Տէր։ Իսկ սոքա
զոր ինչ ոչն իմանան՝ հայհոյեն. եւ
զայլն եւս զոր բնութեամբ իբրեւ զան-
խօս անասունն գիտեն, ի նոսին ապա-
11 կանեսցին։ Վա՜յ է նոցա, զի ըստ ճա-
նապարհին Կայենի գնացին, եւ ըստ
մոլորութեանն Բաղաամայ զեղխեցան
զհետ վարձուց, եւ ըստ հակառակու-
12 թեանն Կորխայ կորեան։ [6]Սոքա են
ատեցեալք չոգմողք՝ երթեալ զհետ
ցանկութեանց իւրեանց, ի սէրս իւր-
եանց խարդախութեամբ, լինին ընդ
ձեզ ուրախակիցք, աներկեւղ՚՚ զան-
ձինս ճարակեն. ամպք անջրդիք հող-
մակոծեալք, ծառք պտղակորոյսք,
անպտուղք, կրկնամեռք, խլեալք ար-
13 մատաքի. Անսաստ ալիք ծովու, որ
մի շտ փրփրեն զիւրեանց անձանցն զա-
մօթ. աստեղք մոլարք, որոց [7]վիհ
խաւարին յաւիտենից պահեալ է։
14 ԻԶ. Մարգարէացաւ վասն նոցա եւ
եւթներորդն յԱդամայ Ենովք, եւ ասէ,
Ահաւասիկ եկն Տէր բիւրովք սրբովք
15 [8]հրեշտակօք, Առնել դատաստան [9]ըստ
ամենայնի՚՚, եւ յանդիմանել զամենայն
ամբարիշտս վասն գործոց իւրեանց
զոր ամբարշտեցին. եւ վասն ամենայն

---

[1] Յոյնն, որոց
[2] Յոյնն, կոչեցեալք
[3] Յոյնն, գրեալ
[4] Ոմանք, զԻշխանն զԱստուած
[5] Ոմանք, միանգամ զայս զի Տէր

[6] Բուլգատ, Սոքա են ի սէրս ձեր արատք, խրախ-ճանակիցք լեալ ձեզ աներկեւղ
[7] Յոյնն, աղջամուղջ
[8] Բուլգատ, իւրովք
[9] Կամ, ի վերայ ամենեցուն

*խիստ բանից զոր խօսեցան զնմանէ*
16 *մեղաւորք [1]եւ ամբարիշտք ։ Սոքա*
*են տրտնջողք եւ չոգմողք, երթեալ*
*ըստ իւրեանց անձանց ցանկութեանց,*
*եւ բերանք նոցա զամբարտաւանս բար-*
*բառին, առնուն ակն երեսաց վասն*
*օգտի ։*
17 *Էէ․ Բայց դուք, սիրելիք, յիշեցէք*
*զկանխասաց բանս զառաքելոցն Տեառն*
18 *մերոյ Յիսուսի Քրիստոսի․ Զի ասէին*
*ձեզ եթէ ի յետին ժամանակս եղիցին*
*մարդք արհամարհողք, երթեալ ըստ*
*իւրեանց ամբարշտութեանցն ցան-*
*կութեանց ։*
19 *Սոքա են [2]նշաւակեալք, շնչաւորք,*
20 *որ զՀոգին ոչ ունիցին ։ Այլ [3]մեք,*
*սիրելիք, եղիցուք՝ շինել զանձինս*
*սրբութեամբն [4]հաւատոց, ի Հոգին*
21 *Սուրբ [5]կացցուք յաղօթս՝, Պահել զան-*
*ձինս սիրովն Աստուծոյ ակն ունել ո-*
*ղորմութեանն Տեառն մերոյ Յիսուսի*
*Քրիստոսի ի կեանսն յաւիտենականս ։*
22 *Եւ [6]ոմանց զատապարտելոց լինիջիք*
23 *կշտամբիչք՝․ Եւ զոմանս ապրեցու-*
*ցանիջիք յափշտակեալ ի հրոյ․ եւ ո-*
*մանց ողորմեսջիք երկիւղիւ, [7]զատել*
*եւ զպատմուճանն որ ի մարմնոյն իցէ*
*աղտեղեալ ։*
24 *Եւ այնմ, որ կարօղն իցէ պահել*
*զձեզ անարատս եւ [8]ամբիծս, հաս-*
*տատեալ առաջի իւրոց փառաց աներ-*
25 *կեւանն ցնծութեամբ, Միոյն Աստու-*
*ծոյ [1]եւ Փրկչին մերոյ [9]Յիսուսի Քրիս-*
*տոսի Տեառն մերոյ փառք, մեծու-*
*թիւն, զօրութիւն եւ իշխանութիւն*
*[10]յառաջ քան զամենայն յաւիտեանս՝,*
*Ե՛ւ այժմ ե՛ւ յամենայն յաւիտեանս ։*
*Ամէն ։*

---

[1] Ի Յունին պակասէ
[2] Յոյնն, զատուցեալք
[3] Բաղդատէ, դուք, սիրելիք, եղիջիք
[4] Ի Յունին, ոմանք՝ հաւատոց ձերոց․ այլք՝ հաւատոց մերոց
[5] Յոյնն, կալ յաղօթս
[6] Յոյնն, ոմանց երկմտելոց ողորմեսջիք
[7] Յոյնն, ատել
[8] Ի բազումս պակասէ
[9] Ոմանք, ի ձեռն Յիսուսի
[10] Յոմանս պակասէ



# [1]ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ

## ՍՐԲՈՅՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅ

## ԵՒ

## ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ ԱՒԵՏԱՐԱՆՉԻ"

### ԳԼՈՒԽ Ա

1 ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ Յիսուսի Քրիստոսի,
[2]ի ձեռն որոյ ետ Աստուած", ցուցանել
ծառայից իւրոց որ ինչ լինելոց է վաղ-
վաղակի, եւ նշանակեաց առաքելով
ի ձեռն հրեշտակի իւրոյ առ ծառայ
2 իւր Յովհաննէս, Որ վկայեաց զբանէն
Աստուծոյ, եւ զվկայութիւն Յիսուսի
Քրիստոսի՝ զոր ետես, [3]որ էր՝ եւ որ
3 լինելոցն էր յետ այնորիկ:" Երանի
[4]որ ընթեռնուն զբանս մարգարէու-
թեանս այսորիկ, եւ որ լսէ եւ պահէ"
զոր ինչ ի նմա գրեալ է. զի ժամա-
նակս մերձեալ է:
4 Ի Յովհաննէ առ եւթն եկեղեցիս որ
են յԱսիա, շնորհք ընդ ձեզ եւ խա-
ղաղութիւն [5]յԷէն եւ որ էն" եւ որ
գալոցն է, եւ յեւթն [6]զօրութեանց
Հոգւոյն՝ որ է" առաջի աթոռոյն իւրոյ.
5 Եւ ի Յիսուսէ Քրիստոսէ հաւատարիմ
վկայէն, որ է անդրանիկ ի մեռելոց,
եւ իշխան թագաւորութեանց երկրի.
որ սիրեաց զմեզ, եւ [7]եհոյծ զկա-
պանս մեղաց մերոց" արեամբն իւրով.
6 Եւ արար զմեզ [8]թագաւորս եւ քա-
հանայս" Աստուծոյ եւ Հօր իւրոյ.
նմա փառք եւ զօրութիւն յաւիտեանս
յաւիտենից: Ամէն:
7 Ահաւասիկ [9]գալոց է" ընդ ամպս.
եւ տեսցեն զնա ամենայն աչք, եւ
որք խոցեցինն զնա. եւ կոծեսցին ի
վերայ նորա ամենայն ազգք երկրի:
8 Այո, Ամէն: Ես եմ Այբ եւ ես եմ
Քէ[10], ասէ Տէր Աստուած, որ էն եւ
[11]որ է" եւ որ գալոցն է, Ամենակալ:
9 Ես Յովհաննէս եղբայր ձեր եւ հա-
ղորդակից նեղութեան եւ արքայու-
թեան եւ համբերութեան որ ի [12]Քրիս-
տոս Յիսուս. եղէ ես ի կղզւոջն որ
անուանեալ կոչի Պատմոս՝ վասն բա-
նին Աստուծոյ եւ վասն վկայութեան
10 Յիսուսի [12]Քրիստոսի: Եւ [13]եղեւ յիս
Հոգի" յաւուր կիւրակէի, եւ լուայ
զկնի իմ ձայն մեծ իբրեւ զփողոյ, որ
ասէր ցիս, [12]Ես եմ Ալփա եւ Ով, Ա-
11 ռաջին եւ Վերջին:" Զոր տեսանես
գրեա ի գիրս, եւ տուր տանել յեւթն
եկեղեցիս, որ յԵփեսոս եւ ի Զմիւռ-
նիա եւ ի Պերգամոն եւ ի Թիւատիր
եւ ի Սարդիկէ եւ ի Փիղադելփիա
12 եւ ի Լաւոդիկիա: Եւ դարձայ տեսա-
նել զձայնն որ խօսէր ցիս. եւ ի դառ-
նալն իմում տեսի եւթն ճրագարան
13 ոսկի: Եւ ի մէջ եւթն ճրագարանացն
նման Որդւոյ մարդոյ, զգեցեալ պատ-
մուճան պճղնաւոր. եւ դօտեւորեալ
14 առ ստեամբքն գօտի ոսկեղէն. Եւ
գլուխ նորա եւ հերքն իբրեւ զասր
սպիտակ եւ որպէս զձիւն. եւ աչք
15 նորա որպէս բոց հրոյ. Եւ ոտք նորա
նմանեալ պղնձոյ ծխելոյ ի մէջ հնոցի
հրաշէկ. եւ ձայն նորա իբրեւ զձայն
16 ջուրց բազմաց: Եւ ունէր յաջոյ ձե-
ռինն իւրում աստեղս եւթն, եւ ի
բերանոյ նորա սուր երկսայրի սրեալ

[1]Ոմանք, Յայտնութիւն Յովհաննու. այլք՝ Յայտնութիւն Սրբոյ Յովհաննու Աստուածաբանի
[2]Յոյնն, զոր ետ նմա Աստուած
[3]Ի Յունէն պակասէ
[4]Յոյնն, որ ընթեռնու, և որ լսեն զբանս մարգարէութեանս և պահեն
[5]Յոյնն, յԱյնմանէ որ էն և որ էրն
[6]Յոյնն, հոգւոց որ են
[7]Ի Յունէն, ոմանք՝ եհոյծ զմեզ ի մեղաց մերոց, այլք՝ լուաց զմեզ ի մեղաց մերոց
[8]Ոմանք, թագաւորութիւն, քահանայս
[9]Յոյնն, գայ

[10]Ոմանք յաւելուն, Սկիզբն և Վախճան
[11]Յոյնն, որ էրն
[12]Յոմանս պակասէ
[13]Յոյնն, եղէ Հոգւով

ելանէր, եւ երեսք նորա իբրեւ [1]զա-
17 րեգակն ճառագայթեալ երեւէին"։ Եւ
իբրեւ տեսի զնա, անկայ առ ոտս նո-
րա իբրեւ զմեռեալ. եւ եդ ի վերայ
իմ զաջ իւր եւ ասէ ցիս, Մի՛ երկնչիր,
ես եմ Առաջինն, եւ ես եմ Վախճան։
18 Եւ ես եմ [2]կենդանիք եւ ես եմ որ մե-
ռայն. եւ աւասիկ կենդանի եմ յա-
ւիտեանս յաւիտենից։ [3]Ամէն։ Եւ ու-
նիմ զփականս մահու եւ դժոխոց։
19 Գրեա զոր տեսանեսդ, որ էն, եւ որ
հանդերձեալ է լինել յետ այնորիկ.
20 Զխորհուրդ եւթն աստեղացդ զոր տե-
սերդ յաջ իմ, եւ զեւթն ճրագարանս
ոսկիս. եւթն աստեղքն հրեշտակք
եւթն եկեղեցեացն են, եւ եւթն ճրա-
գարանքն եւթն եկեղեցիքն են։

Գլ. Բ

1 Առ հրեշտակ Եփեսացւոց եկեղեցւոյն
գրեա. Այսպէս ասէ որ ունի զեւթն
աստեղս յաջ իւր, եւ շրջի ի մէջ եւթն
2 աշտանակաց ոսկւոյ. Գիտեմ զգործս
քո եւ զվաստակս քո եւ զհամբերու-
թիւն քո. եւ զի ոչ կարես [4]բառնալ
զչարսն", եւ փորձեցեր որ ասեն զինք-
եանս առաքեալս եւ ոչ են, եւ գտեր
3 զնոսա ստեալս։ Եւ համբերեցեր եւ
վշտացար վասն անուան իմոյ՝ եւ [5]աշ-
4 խատեցար։ Այլ [6]ասեմ առ քեզ, զի
5 զսէրն քո զառաջին թողեր։ Յիշեա
այժմ ուստի անկարն, եւ ապաշաւեա,
եւ զառաջին գործսն [7]քո արա. ապա
թէ ոչ՝ [8]գամ ես" [9]վաղվաղակի, եւ
շարժեցից զաշտանակս քո ի տեղւոջէ
6 իւրմէ, եթէ ոչ ապաշխարեսցես։ Արդ
զայս [10]արա՝ զի ատեսցես" զգործսն
7 Նիկողայոսի, զոր ես ատեամ։ Որ ու-
նի ականջս լսելոյ՝ լուիցէ զինչ ասէ
Հոգին առ եկեղեցիս. Որ յաղթէն,
տաց նմա ուտել ի փայտէն կենաց որ է
ի մէջ դրախտին Աստուծոյ։
8 Եւ առ հրեշտակ Զմիւռնացւոց ե-
կեղեցւոյն գրեա. Այսպէս ասէ [11]Ա-
ռաջինն եւ Անվախճանն", որ եղեւ
9 մեռեալ եւ կենդանացաւ. [12]Տեսի
զգործս քո եւ զնեղութիւն եւ զաղ-
քատութիւն, ([13]այլ աղքատութիւն
քո մեծութիւն եղիցի",) եւ զհայհոյու-
թիւնն, որ ասէին զինքեանս Հրեայս
գոլ՝ եւ չէին ինչ, այլ՝ ժողով Սատա-
10 նայի։ Մի՛ երկնչիր, [14]վասն որոյ կա-
միս չարչարել". ահա հանդերձեալ է
Բանսարկուն արկանել ի ձէնջ ի բանտ,
զի փորձիցիք, եւ ունիցիք նեղու-
թիւն աւուրս տասն. լեր հաւատարիմ
մինչեւ ի մահ, եւ տաց քեզ զպսակն
11 կենաց։ Որ ունի ականջս լսելոյ՝ լուի-
ցէ զինչ Հոգին Սուրբ ասէ առ ե-
կեղեցիս. Որ յաղթէ, [15]ոչ անիրաւի"
յերկրորդ մահուանէ։
12 Եւ առ հրեշտակն որ ի Պերգամոյ
եկեղեցին՝ գրեա. Այսպէս ասէ որ
13 ունի զսուրն երկսայրի սրեալ. [12]Տեսի
զգործս քո, եւ" զի բնակեալ ես ուր
աթոռն է Սատանայի, եւ ունիս զա-
նուն իմ, եւ ոչ ուրացար զհաւատս
իմ յաւուր յորում Անթիպաս վկայն
իմ հաւատարիմ [16]եղեւ. զի վկայ է
իմ հաւատարիմ ամենայն հաւատա-
ցեալ՝ որ սպանաւ ի ձէնջ, որ կայք"
14 ուր Սատանայ է բնակեալ։ Այլ ունիմ
առ քեզ սակաւ, զի [17]կայ առ քեզ
վարդապետութիւնն" Բաղաամու, որ
ուսոյց զԲաղակ զնել գայթակղութիւն
առաջի որդւոցն Իսրայելի, ուտել նո-
15 ցա զոհեալ եւ պոռնկել։ Այսպէս եւ
դու ունիս զվարդապետութիւնն Նի-
16 կողայեցեաց զոր ես ատեամ։ Արդ ա-
պաշխարեա, ապա թէ ոչ՝ [18]գամ վաղ-
վաղակի, եւ պատերազմեցայց ընդ
17 նոսա սրով բերանոյ իմոյ։ Որ ունիցի
ականջս լսելոյ՝ լուիցէ զինչ Հոգին
ասէ առ եկեղեցիս. Որ յաղթէ՝ տաց
նմա ուտել ի մանանայէն թաքուցելոյ,
եւ տաց նմա [19]զգիրն սրբութեան",

[1] Յոյնն, զարեգակն որ ծագէ ի զօրութեան իւրում
[2] Յոյնն, որ կեամ
[3] ի Բազումս պակասէ
[4] կամ, տանել չարաց
[5] Յոյնն, ոչ թուլացար
[6] Յոյնն, ունիմ
[7] ի Յունէն պակասէ
[8] Յոյնն, գամ առ քեզ
[9] Յոմանս պակասէ
[10] Յոյնն, ունիս զի ատես
[11] Յոյնն, Առաջինն և Վերջինն
[12] Յոյնն, Գիտեմ
[13] Յոյնն, այլ մեծատուն ես
[14] Յոյնն, յորոց կրելոցն իցես
[15] կամ, ոչ վնասեսցի
[16] Յոյնն, որ սպանաւ ի միջի ձերում
[17] Յոյնն, ունիս անդ զորս ունին զվարդապետութիւնն
[18] Յոյնն, գամ առ քեզ
[19] Յոյնն, խիճ սպիտակ

եւ գրեալ անուն նոր [1]ի վերն, զոր
ոչ ոք գիտէ՝ բայց միայն որ առնուն։
18 Եւ առ հրեշտակն որ ի Թիւատիրայ
եկեղեցւոյն՝ գրեա. Այսպէս ասէ Որդին
Աստուծոյ, որոյ աչք իւր են իբրեւ
զբոց հրոյ, եւ ոտք նորա նման պղնձի
19 ծխելոյ. [2]Տեսի զգործս քո եւ զսէր
եւ զհաւատ եւ զպաշտօն քո [3]համբե-
րութեամբ, զի բազում է վաստակ քո
20 վերջինն քան զառաջինն։ Այլ [4]ասեմ
առ քեզ [5]բազում. զի թողեր զկինն
զՅեզաբէլ, որ ասէր զինքն մարգարէ,
եւ ուսուցանէր [6]մոլորութիւն զծա-
ռայս իմ՝ պոռնկել եւ ուտել զզոհեալ։
21 Եւ ետու [7]նոցա ժամանակ ապաշխա-
րել [8]զպոռնկութիւնն իւրեանց եւ ոչ
22 ապաշխարեցին"։ Ահաւասիկ ես ար-
կանեմ զնա [9]ի հնոց, եւ զգործակիցս
իւր ընդ որս շնացաւ՝ ի նեղութիւնս
մեծամեծս, եթէ ոչ ապաշխարեսցեն
23 ի գործոց իւրեանց։ Եւ զորդիս [10]նո-
ցա սպանից մահուամբ, եւ ծանիցեն
ամենայն եկեղեցիք թէ ես եմ որ յան-
դիմանեմ զերիկամունս եւ զսիրտս,
եւ տամ ձեզ իւրաքանչիւր ըստ գոր-
24 ծոց իւրեանց։ Այլ ձեզ ասեմ, որք
ի Թիւատիր էք եւ ոչ ունիք զվարդա-
պետութիւնս զայս, որ ոչ ծանեայք
զխորս Սատանայի զոր խօսին, Ոչ
25 արկից զձեւք այլ ծանրութիւն. Այլ
զոր ունիք, պահեցէք մինչեւ ես գամ։
26 Եւ որ յաղթէ եւ պահէ զգործս իմ
մինչեւ ցվախճան, տաց նմա իշխա-
27 նութիւն ի վերայ ազգաց։ Եւ հով-
ուեսցէ զնոսա գաւազանաւ երկա-
թեաւ, եւ իբրեւ զանօթ բրտի փշրես-
28 ցէ զնոսա։ Որպէս եւ ես ընկալայ ի
Հօրէ իմմէ, եւ տաց նոցա զաստղն
29 առաւօտուն։ Որ ունի ականջս՝ լուիցէ
զինչ Հոգին ասէ առ եկեղեցիս։

ԳԼ. Գ

1 Եւ առ հրեշտակ Սարդիացւոց եկե-
ղեցւոյն գրեա. Այսպէս ասէ որ ունի
զեւթն [11]Հոգին Աստուծոյ եւ զեւթն
աստեղս. [2]Տեսի զգործս քո զի անուն
2 կենդանւոյ ունիս եւ մեռեալ ես։ Լեր
արթուն եւ հաստատեա [12]զյաւուհետեւ,
զի հանդերձեալ ես" մեռանել. քանզի
ոչ գտի զգործս քո կատարեալ առաջի
3 Աստուծոյ։ Արդ յիշեա թէ որպէս
լուարն, եւ պահեա եւ ապաշխարեա.
ապա թէ ոչ զուարթնաս, գամ որ-
պէս գող. եւ ոչ [13]ոք իմանայ" զգա-
4 լուստ իմ առ քեզ։ [14]Ունիս սակաւ
մի զանուն Սարդիացւոցն" որք ոչ
աղտեղացուցին զհանդերձս իւրեանց,
եւ [15]շրջին ի սպիտակս որում արժանի
5 եղեն"։ Որ յաղթէ [16]այսպէս զգեցցի
սպիտակս, եւ ոչ [17]ջնջեսցի անուն"
նորա ի դպրութենէն կենաց. եւ խոս-
տովանեցայց զանուն նորա առաջի
Հօր իմոյ եւ առաջի [18]հրեշտակաց։
6 Որ ունի ականջս՝ լուիցէ զինչ ասէ
Հոգին առ եկեղեցիս։
7 Եւ առ հրեշտակն Փիղադեղփեայ ե-
կեղեցւոյն գրեա. Այսպէս ասէ Սուրբն,
Ճշմարիտն՝ որ ունի զփականս Դաւթի.
բանայ՝ եւ ոչ ոք է որ փակէ, եւ փակէ՝
8 եւ ոչ ոք է որ բանայ. [2]Տեսի զգործս
քո. ահա ետու առաջի քո դուռն բաց-
եալ, զոր ոչ ոք կարէ փակել. զի սա-
կաւիկ ունիս զօրութիւն, եւ պահեցեր
զբանս իմ, եւ ոչ ուրացար զանուն
9 իմ։ Ահաւասիկ ես տամ քեզ [19]ի ժո-
ղովրդենէ Սատանայի, որք ասեն զինքեանս
Հրեայս գոլ՝ եւ ոչ են, այլ ստեն. ա-
րարից զնոսա, զի եկեսցեն եւ երկիր
պագցեն առաջի ոտից քոց, եւ ծանի-
10 ցեն զի ես սիրեցի զքեզ։ Զի պահեցեր
զբան համբերութեան իմոյ, եւ ես
պահեցից զքեզ ի ժամ փորձութեան
քո. որ հանդերձեալ է գալ յամենայն
տիեզերս՝ փորձել զամենայն բնակեալս
11 յերեսս երկրի։ Ահա գամ վաղվաղակի.
կալ զոր ունիսդ, զի մի՛ ոք առցէ
12 զպսակ քո։ Որ յաղթէ՝ արարից զնա

[1] Յոյնն, ի վերայ խճին
[2] Յոյնն, Գիտեմ
[3] Յոյնն, և զհամբերութիւն
[4] Յոյնն, ունիմ
[5] Ոմանք, սակաւ. յայլ՝ ժամ սահմանեալ
[6] Յոյնն, և մոլորեցուցանէր
[7] Յոյնն, նմա
[8] Յոյնն, ի պոռնկութենէ իւրմէ, և ոչ ապաշ-
խարեաց
[9] Յոյնն, ի մահիճս
[10] Յոյնն, նորա
[11] Յոյնն, Հոգիսն
[12] Յոյնն, զմնացեալսն որ հանդերձեալ են
[13] Ոմանք, իմասցիս
[14] Յոյնն, Այլ ունիս սակաւ անուանս ի Սարդիկէ
[15] Յոյնն, շրջեսցին ընդ իս ի սպիտակս, քանզի
արժանի են
[16] Ոմանք, նա
[17] Յոյնն, ջնջեցից զանուն
[18] Յոյնն, հրեշտակաց նորա
[19] Յոյնն, ի ժողովրդեան

մուտն տաճարի Աստուծոյ իմոյ , եւ
արտաքս այլ մի՛ եւս ելցէ . եւ գրեցից
ի վերայ նորա զանուն Աստուծոյ իմոյ,
եւ զանուն քաղաքի Աստուծոյ իմոյ ,
զնորն Երուսաղեմի , որ իջանելոց է
յերկնից Աստուծոյ իմոյ , եւ [1]անուն
13 նորա" նոր ։ Որ ունի ականջս՝ լուիցէ
զինչ ասէ Հոգին առ եկեղեցիս ։
14 Եւ առ հրեշտակն Լաւոդիկեայ եկե-
ղեցւոյն գրեա . Այսպէս ասէ Ամէնն ,
Վկայն հաւատարիմ եւ ճշմարիտ ,
Սկիզբն [2]սկզբան արարածոց Աստու-
15 ծոյ . Գիտեմ զգործս քո , զի ոչ ցուրտ
ես եւ ոչ ջերմ . պարտ էր քեզ ցուրտ
16 լինել եւ կամ ջերմ ։ Այլ դու գաղջ ես,
եւ ոչ ջերմ եւ ոչ ցուրտ , հանդեր-
17 ձեալ եմ փսխել ի բերանոյ իմմէ ։ Զի
ասես , Մեծատուն էի եւ մեծացայ ,
եւ ոչ ինչ կարօտ եմ . եւ ոչ գիտես
եթէ դու ես ողորմելի եւ հէք եւ աղ-
18 քատ , մերկ եւ կոյր ։ Արդ ես խորհըր-
դակից եղէց քեզ . Առ , գնեա յինէն
ոսկի փորձեալ ի հրոյ զի մեծասցիս ,
եւ հանդերձս սպիտակս՝ զի զգեցցիս ,
զի մի՛ երեւեսցի անվայելչութիւն մեր-
կութեան քո . եւ դիր դեղ յաչս քո
19 զի տեսցես ։ Ես զոր սիրեմ յանդիմա-
նեմ եւ խրատեմ . նախանձեա այժմ
20 եւ ապաշխարեա ։ Ահաւասիկ կամ ես
առ դուրս եւ բախեմ . եթէ ոք լուիցէ
ձայնի իմում եւ բանայցէ զդրունսն ,
մտից առ նա եւ ընթրիս արարից առ
21 նա , եւ նա ընդ իս ։ Որ յաղթէ՝ տաց
նմա նստել ընդ իս յաթոռ իմ , որպէս
եւ ես յաղթեցի եւ նստայ յաթոռ Հօր
22 իմոյ ։ Որ ունիցի ականջս՝ լուիցէ զինչ
ասէ Հոգին առ եկեղեցիս ։

ԳԼ. Դ

1 Եւ յետ այսորիկ տեսի , եւ ահա
[3]դրունք երկնից բացեալ էին", եւ [4]ձայն
փողոյն առաջնոյ զոր լուայ" խօսէր
ընդ իս եւ ասէր , Ել այսր , եւ ցուցից
2 քեզ զինչ լինելոց է առ յապայն ։ Եւ
վաղվաղակի եղէ ես Հոգւով , եւ ահա
3 աթոռ անդ [5]յերկինս ։ Եւ ի վերայ ա-
թոռոյն նստէր" նման տեսլեան ականց
4 յասպիսոյ եւ սարդիոնի ։ Եւ [6]քահա-
նայք շուրջ զաթոռովն նմանք" տես-
լեան զմրխտի , եւ շուրջ զաթոռովն
աթոռք քսան եւ չորք , եւ ի վերայ
աթոռոցն նստէին քսան եւ չորք երի-
ցունք՝ զգեցեալ հանդերձս սպիտակս ,
եւ ի գլուխս իւրեանց պսակս ոսկե-
5 ղէնս ։ Եւ յաթոռոյ անտի ելանէին
փայլատակմունք եւ ձայնք եւ որոտ-
մունք . եւ եւթն ղամբարք հրոյ բոր-
բոքելոյ առաջի աթոռոյն , որ են եւթն
6 Հոգիքն Աստուծոյ ։ Եւ էր առաջի ա-
թոռոյն ծով ապակեղէն ի նմանութիւն
սպիտակութեան սառին , եւ ի մէջ ա-
թոռոյն եւ շուրջ զաթոռովն չորք կեն-
դանիք , լի աչօք առաջոյ եւ յետոյ ։
7 Եւ էր կենդանին առաջին նման ա-
ռիւծու , եւ երկրորդ կենդանին՝ նման
զուարակի , եւ երրորդ կենդանին ու-
նէր երեսս մարդոյ , եւ չորրորդ կեն-
8 դանին՝ նման արծուոյ թռուցելոյ ։ Եւ
չորից կենդանեացն էին միոյ միոյ ի
նոցանէ վեց թեւք շուրջանակի , եւ
ի ներքոյ լի էին աչօք , եւ ոչ հանգչէ-
ին ոչ զտիւ եւ ոչ զգիշեր յասելոյ ,
[7]Սուրբ , Սուրբ , Սուրբ , Սուրբ ,
Սուրբ , Սուրբ , Սուրբ , Սուրբ ,
Սուրբ", Տէր Աստուած Ամենակալ ,
9 [8]որ էն եւ ես եւ որ գալոց ես"։ Եւ
յորժամ տային կենդանիքն փառս եւ
պատիւ եւ գոհութիւն նստելոյն ի վե-
րայ աթոռոյն՝ կենդանւոյն յաւիտեանս
10 յաւիտենից , Անկանէին քսան եւ չորք
երիցունքն առաջի նստելոյն յաթոռն ,
եւ երկիր պագանէին կենդանւոյն
յաւիտեանս յաւիտենից . եւ դնէին
զպսակս իւրեանց առաջի աթոռոյն եւ
11 ասէին , Արժանի ես , [9]Տէր Աստուած
մեր սուրբ", առնուլ փառս եւ պատիւ
եւ զօրութիւն , զի դու ստեղծեր զա-
մենայն , եւ ի կամելն քո ստեղծան եւ
կան հաստատուն ։

---

[1]Յոյնն , զանուն իմ
[2]Ի Յոյնսն պակասէ
[3]Յոյնն , դուռն բացեալ էր յերկինս
[4]Յոյնն , ձայնն առաջին զոր լուայ՝ էր իբրեւ զփողյ , որ
[5]Յոյնն , յերկինս . և ոմն որ նստէր ի վերայ աթոռոյն ։ (3) Եւ որ նստէրն՝ էր
[6]Բազումք , ծիածան շուրջ զաթոռովն նման
[7]Բազումք , Սուրբ , Սուրբ , Սուրբ
[8]Յոյնն , որ էրն և որ էն և որ գալոցն է
[9]Բազումք , Տէր և Աստուած մեր

## ԳԼ· Ե

1 Եւ տեսի յաջոյ ձեռինն որ նստէր ի
վերայ աթոռոյն գիրս գրեալ ներքոյ
եւ արտաքոյ, եւ կնքեալ եւթն կնքովք։
2 Եւ տեսի հրեշտակ մի զօրաւոր զի
քարոզէր ի ձայն մեծ, Ո՞ է արժանի
բանալ զգիրս եւ լուծանել զկնիք նո-
3 րա։ Եւ ոչ ոք կարէր ոչ յերկինս եւ
ոչ յերկրի եւ ոչ ի ներքոյ երկրի բա-
4 նալ զգիրսն, [1]զի ոչ տեսին զնա"։ Եւ
ես լայի ուժգին զի ոչ ոք գտաւ ար-
ժանի բանալ զգիրսն եւ հայել ի նա։
5 Եւ մի յերիցանցն ասէ ցիս, Մի՛ լար.
ահաւասիկ յաղթեաց Առեւծն յազգէն
Յուդայ յարմատոյն Դաւթի՝ բանալ
զգիրսն եւ լուծանել զեւթն կնիքսն
6 նորա։ Եւ տեսի ի մէջ աթոռոյն եւ
ի մէջ չորից կենդանեացն եւ ի մէջ ե-
րիցանցն Գառն կայր [2]զենեալ, որ ու-
նէր եւթն եղջեւրս եւ աչս եւթն, որ
են եւթն Հոգիք Աստուծոյ, առաքեալ
7 ընդ ամենայն երկիր։ Եւ [3]եկն ընկա-
լաւ" յաջոյ ձեռանէ նորա որ նստէր
8 ի վերայ աթոռոյն։ Եւ յորժամ առ
զգիրն, չորք կենդանիքն եւ քսան եւ
չորք երիցունքն անկանէին առաջի
Գառինն. եւ ունէին իւրաքանչիւր
քնար եւ բուրվառ ոսկի լի խնկով,
9 որ է աղօթք սրբոցն։ Եւ օրհնէին երգս
նորս եւ ասէին, Արժանի ես առնուլ
զգիրդ եւ բանալ զկնիք դորա, զի
զենար եւ գնեցեր զմեզ Աստուծոյ ար-
եամբդ քով յամենայն ազգաց եւ ի
լեզուաց եւ [4]ի ժողովոց հեթանոսաց"։
10 Եւ արարեր [5]զոսոսա Աստուծոյ մերոյ
[6]թագաւորս եւ քահանայս" թագաւո-
11 րել ի վերայ երկրի։ Եւ տեսի, եւ
լուայ զձայն հրեշտակաց բազմաց որք
կային շուրջ զաթոռովն եւ զչորիւք
կենդանեօքն եւ [7]զքահանայիւքն, եւ
էր թիւն նոցա բեւրք բիւրուց եւ հա-
12 զարք հազարաց։ Ասէին ձայնիւ մե-
ծաւ, Արժանի է Գառնդ զենեալ առնուլ
զմեծութիւն եւ զիմաստութիւն եւ
զզօրութիւն եւ զպատիւ եւ զփառս
13 եւ զօրհնութիւն։ Եւ ամենայն արա-
րածք որ են յերկինս եւ [8]յերկրի եւ
ի ծովու եւ որ ի նոսա՝ լուայ զի ա-
սէին, [9]Որ նստի յաթոռն եւ Գառնն՝
օրհնեալ, բարձրացեալ եւ փառաւոր-
14 եալ" յաւիտեանս յաւիտենից։ Եւ չորք
կենդանիքն ասէին, Ամէն. եւ [10]երի-
ցունքն անկանէին առաջի նորա եւ
[11]երկիր պագանէին"։

## ԳԼ· Զ

1 Եւ տեսի զի եբաց Գառնն զմին
[12]յեւթն կնքոցն", եւ լուայ ի միոյ ի
չորից կենդանեացն իբրեւ զձայն ո-
2 րոտման զի ասէր [13]Թէ Գամ"։ Եւ տե-
սի եւ ահա ձի սպիտակ, եւ որ հեծ-
եալն էր ի նմա՝ ունէր աղեղն. եւ
տուաւ նմա պսակ, եւ [14]եկն յաղթողն
զի յաղթեսցէ"։
3 Եւ յորժամ եբաց զկնիքն երկրորդ,
լուայ յերկրորդ կենդանւոյն զի ասէր,
4 [13]Գամ։ Եւ ել այլ ձի կարմիր, եւ որ
հեծեալն էր ի վերայ նորա՝ տուաւ նմա
առնուլ զխաղաղութիւն յերկրէ, զի
զմիմեանս զենցեն, եւ տուաւ նմա
սուր մի մեծ։
5 Եւ յորժամ եբաց զկնիքն երրորդ,
լուայ յերրորդ կենդանւոյն զի ասէր
[13]Թէ Գամ". եւ տեսի եւ ահա ձի
սեաւ, եւ որ նստեալն էր ի վերայ
նորա՝ ունէր կշիռ ի ձեռին իւրում։
6 Եւ լուայ ձայն ի միջոյ չորից [15]կեն-
դանեացն, Կապիճ մի ցորեան՝ դենարի
միոջ, եւ երեք կապիճ գարի՝ դենարի
միոջ. եւ ձէթ եւ գինի մի՛ վնասեսցես։
7 Եւ յորժամ եբաց զկնիքն չորրորդ,
լուայ ձայն ի չորրորդ կենդանւոյն զի
8 ասէր [13]Թէ Գամ"։ Եւ տեսի, եւ ահա ձի
դեղնոս, եւ որ նստէրն ի վերայ նորա՝
[16]ունէր զՄահ", եւ Դժոխք երթային

[1]Յոյնն, և ոչ հայել ի նա
[2]Յոյնն, իբրև զենեալ
[3]Ոմանք, եկն և առ զգիրն
[4]Յոյնն, ի ժողովրդոց և ի հեթանոսաց
[5]Ոմանք, զմեզ
[6]Ոմանք, թագաւորութիւն և քահանայութիւն
[7]Յոյնն, զերիցամբքն

[8]Բազումք, յերկրի և ի ներքոյ երկրի
[9]Յոյնն, Այնմ որ նստի յաթոռն և Գառինն օրհնութիւն և պատիւ և փառք և զօրութիւն
[10]Ոմանք, քսան և չորք երիցունք
[11]Ոմանք, երկիր պագանէին կենդանւոյն յաւիտեանս յաւիտենից
[12]Ոմանք, ի կնքոցն
[13]Ի Յոյնսն, ոմանք՝ Եկ, այլք՝ Եկ և տես
[14]Ի Յոյնսն, ոմանք՝ ել յաղթող և զի յաղթեսցէ. այլք՝ ել յաղթող և յաղթեաց
[15]Յոյնն, կենդանեացն որ ասէր
[16]Յոյնն, անուն նմա Մահ

զհետ նորա. եւ տուաւ [1]նմա իշխա-
նութիւն չորրորդ մասին աշխարհի
սատակել սրով եւ սովով եւ մահուամբ
եւ գազանօք երկրի։
9 Եւ յորժամ եբաց զկնիքն հինգերորդ՝
տեսի ի ներքոյ սեղանոյն զհոգիս [2]ա-
մենայն [3]մարդկան զենեալ՝՝ վասն բա-
նին Աստուծոյ եւ վասն վկայութեան
10 նորա զոր ունէին։ Որք աղէին ի ձայն
մեծ, Մինչեւ յե՞րբ, Տէր սուրբ եւ
ճշմարիտ, ոչ դատիս եւ խնդրես
զվրէժ արեան մերոյ ի բնակչաց երկրի։
11 Եւ տուաւ [4]նոցա արկանելիս սպի-
տակս՝՝, եւ ասացաւ նոցա զի հանգի-
ցեն փոքր մի ժամանակ, մինչեւ լցցին
ծառայակիցք նոցա եւ եղբարք նոցա
որք հանդերձեալ են կատարել իբրեւ
զնոսա։
12 Եւ տեսի յորժամ եբաց զկնիքն վե-
ցերորդ, եղեւ շարժումն մեծ, եւ ա-
րեգակն եղեւ սեաւ իբրեւ զկապերտ
այծեայ, եւ լուսինն [5]բոլորովին եղեւ
13 իբրեւ արիւն։ Եւ աստեղք երկնից
թօթափեցան յերկիր, որպէս [6]տերեւ
թզենւոյ զի ուժգին շարժիցի ի հող-
14 մոյ՝՝. Եւ երկինք իբրեւ զմագաղաթ-
եայ գիրս գալարին. եւ ամենայն լե-
րինք եւ կղզիք ի տեղւոյ իւրեանց
15 շարժեցան։ Եւ թագաւորք երկրի եւ
իշխանք, հազարապետք եւ մեծամեծք
եւ զօրաւորք եւ ամենայն ծառայք եւ
ամենայն ազատք թաքուցին զինքեանս
16 յայրս եւ ի ծերպս վիմաց։ Եւ ասէին
[7]լերանց թէ՝ Անկերուք ի վերայ մեր,
17 եւ ցբլուրս՝ թէ Ծածկեցէք զմեզ՝՝։ Զի
եկն օր մեծ բարկութեան [8]նորա, եւ
ո՞վ կարէ կալ [2]առաջի նորա՝՝։

## ԳԼ. Է

1 Եւ յետ այնորիկ տեսի չորս հրեշտակս
զի կային ի չորս անկիւնս երկրի,
եւ ունէին զչորս հողմս երկրի, զի
մի՛ շնչեսցէ հողմ ի վերայ երկրի եւ
2 մի՛ ի ծովու եւ մի՛ ի ծառս։ Եւ տեսի
այլ հրեշտակ զի ել յարեւելից, եւ ու-
նէր զկնիք Աստուծոյ կենդանւոյ, եւ
աղաղակեաց ձայնիւ մեծաւ առ չորս
հրեշտակսն՝ որոց [9]տուեալ էր իշխա-
նութիւն՝՝ ապականել զերկիր եւ զծով.
3 Եւ ասէր, Մի՛ վնասէք երկրի, մի՛ ծո-
վու, մի՛ ծառոց. դադարեցէք մինչեւ
[10]կնքեցից զծառայս Աստուծոյ [11]իմոյ։
4 Եւ լուայ զթիւ կնքելոցն զի էին
հարեւր քառասուն եւ չորք հազարք՝
կնքեալք յազգէ որդւոցն Իսրայելի.
5 Յազգէն Յուդայ՝ երկոտասան հազար
կնքեալ, յազգէն Ռուբենի՝ երկոտա-
սան հազար կնքեալ, յազգէն Գադայ՝
6 երկոտասան հազար կնքեալ, Յազգէն
Ասերայ՝ երկոտասան հազար կնքեալ,
յազգէն Նեփթաղիմայ՝ երկոտասան
հազար կնքեալ, յազգէն Մանասէի՝
7 երկոտասան հազար կնքեալ, Յազգէն
Շմաւոնի՝ երկոտասան հազար կնքեալ,
յազգէն Ղեւեայ՝ երկոտասան հազար
կնքեալ, յազգէն Իսաքարայ՝ երկոտա-
8 սան հազար կնքեալ, Յազգէն Զաբու-
ղոնի՝ երկոտասան հազար կնքեալ,
յազգէն Յովսեփու՝ երկոտասան հա-
զար կնքեալ, յազգէն Բենիամինի՝ եր-
կոտասան հազար կնքեալ։
9 Եւ յետ այսորիկ տեսի եւ ահա ժո-
ղովուրդ բազում որոց ոչ գոյր թիւ,
յամենայն հեթանոսաց եւ յամենայն
ազգաց եւ յամենայն լեզուաց եւ յա-
մենայն ժողովրդոց, որք կային առաջի
աթոռոյն եւ առաջի Գառինն՝ արկեալ
զիւրեամբք հանդերձս սպիտակս, եւ
10 արմաւենիս ի ձեռս իւրեանց։ Աղա-
ղակէին ի ձայն մեծ եւ ասէին, Փրկու-
թիւն Աստուծոյ մերոյ, որ նստի ի
11 վերայ աթոռոյն, եւ Գառինն։ Եւ ա-
մենայն հրեշտակք կային շուրջ զա-
թոռովն եւ զերիցամբքն եւ զչորիւք
կենդանեօքն, եւ անկանէին յերեսս
առաջի աթոռոյն եւ երկիր պագանէին
12 Աստուծոյ, Ասելով, Ամէն. օրհնու-
թիւն եւ փառք եւ իմաստութիւն եւ
գոհութիւն եւ պատիւ եւ զօրութիւն

[1]Բազումք, նոցա
[2]Ի Յոյնէն պակասէ
[3]Ոմանք, զենելոց
[4]Յոյն, նոցա իւրաքանչիւր արկանելի սպիտակ
[5]Յոմանս պակասէ
[6]Յոյն, որպէս թզենի ընկենու զպտուղս իւր խակս, յուժգին հողմոյ շարժեալ
[7]Յոյն, լերանց և վիմաց թէ՝ Անկերուք ի վերայ մեր և ծածկեցէք զմեզ յերեսաց այնորիկ որ նստի ի վերայ աթոռոյն՝ և ի բարկութենէ Գառինն
[8]Ոմանք, նոցա
[9]Յոյն, տուեալ էր
[10]Յոյն, կնքեսցուք
[11]Յոյն, մերոյ ի ճակատս նոցա

եւ [1]զօրութիւն Տեառն Աստուծոյ մերոյ
13 յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։ Եւ
ասէ ցիս մի յերիցանց անտի, Սոքա
որ զգեցեալ են զպատմուճանս սպիտակս՝
14 ո՞յք են, եւ [2]կամ ուստի՞ գան։ Եւ
ասացի ցնա, Տէր, դու գիտես. եւ
ասէ ցիս, Սոքա են որ գան ի նեղութեանց
մեծաց, եւ լուացին զպատմուճանս իւ-
եանց եւ սպիտակացուցին արեամբ
15 Գառինն։ Վասն այնորիկ են առաջի
աթոռոյն Աստուծոյ, եւ պաշտեն զնա
զտիւ եւ զգիշեր ի տաճարի նորա, եւ
որ նստի ի վերայ աթոռոյն՝ [3]բնակեալ
16 է ի նոսա"։ [4]Ոչ քաղցիցեն եւ [4]ոչ ծա-
րաւիցեն, եւ ոչ մտցէ նոցա ոչ ա-
17 րեգակն եւ ոչ տօթ։ [5]Եւ Գառնն ի
միջոյ աթոռոյն [2]իւրոյ հովուեսցէ զնո-
սա, եւ առաջնորդեսցէ նոցա [6]ի կենաց
աղբեւր ջրոյ կենդանւոյ. քանզի ե-
հատ" Աստուած զամենայն արտասուս
յաչաց նոցա։

## ԳԼ. Ը

1 Եւ յորժամ եբաց զկնիքն եւթներորդ,
եղեւ լռութիւն յերկինս որպէս կէս
2 ժամու։ Եւ տեսի [7]հրեշտակս եւթն"
որ առաջի Աստուծոյ կային. եւ տուաւ
3 նոցա եւթն փող։ Եւ այլ հրեշտակ
եկն եւ եկաց առ սեղանն, եւ ունէր
խնկանոց ոսկի, եւ տուաւ նմա խունկ
բազում, զի մատուսցէ [8]զաղօթս ա-
մենայն սրբոց ի վերայ ոսկեղէն սե-
4 ղանոյ առաջի աթոռոյն։ Եւ ել ծուխ
խնկոցն՝ [8]աղօթք սրբոցն [9]ի ձեռաց
5 հրեշտակացն" առաջի Աստուծոյ։ [10]Եւ
ելից հրեշտակն զխնկանոցն" ի հրոյ
սեղանոյն, եւ արկ զնա յերկիր. եւ
եղեւ որոտումն եւ ձայնք եւ փայլա-
6 տակումն եւ շարժումն մեծ։ Եւ եւթն
հրեշտակքն որ ունէին եւթն փողս՝
պատրաստեցին զինքեանս առ ի հար-
կանել։

7 Եւ առաջին հրեշտակն եհար զփողն,
եւ եղեւ կարկուտ եւ հուր եւ արիւն
խառնեալ, եւ անկաւ յերկիր, եւ զեր-
րորդ մասն երկրի այրեաց, եւ զերրորդ
մասն ծառոց այրեաց, եւ զամենայն
դալար խոտոյ այրեաց։
8 Եւ երկրորդ հրեշտակն փողեաց, եւ
իբրեւ զլեառն մի մեծ հրդեհեալ ան-
կաւ ի ծով, եւ եղեւ երրորդ մասն
9 ծովու արիւն. Եւ սատակեցաւ եր-
րորդ մասն [11]լուղակաց, եւ որ ունէր
շունչ կենդանի ապականեցաւ"։
10 Եւ երրորդ հրեշտակն փողեաց, եւ
անկաւ յերկնից աստղ մի մեծ՝ բոր-
բոքեալ իբրեւ զղամբար, եւ անկաւ
յերրորդ մասն գետոց եւ աղբերաց.
11 Եւ էր անուն աստեղն [12]Դառնութիւն.
եւ բազումք մեռան ի դառնութենէ
ջուրցն"։
12 Եւ չորրորդ հրեշտակն փողեաց, եւ
վիրաւորէր երրորդ մասն արեգական
եւ երրորդ մասն լուսնի եւ երրորդ
մասն աստեղաց. [13]եւ խաւարէր" եր-
րորդ մասն նոցա, [14]եւ երրորդ մասն
գիշերոյ" նոյնպէս։
13 Եւ տեսի եւ լուայ ձայն [15]հրեշտակի
թռուցելոյ ի մէջ երկնից զի ասէր ի
ձայն մեծ, Վա՜յ, վա՜յ, վա՜յ, [16]որ
բնակեալ են յերկրի, յորժամ լինիցի
ձայն երիցն եւս փողոց զոր կամիցին
հրեշտակքն" հարկանել։

## ԳԼ. Թ

1 Եւ հինգերորդ հրեշտակն փողէր, եւ
տեսի զի աստղ մի անկաւ յերկնից,
եւ տուաւ նմա բանալի դբոյն անդըն-
2 դոց. [17]Եւ ելանէր" ծուխ ի դբոյն որ-
պէս զծուխ հնոցի մեծի. եւ խաւարե-
3 ցաւ արեգակն եւ [18]օդք։ Եւ ի դբոյն"

[1] Յոյնն, կարողութիւն
[2] Ի Յոյնն պակասէ
[3] Յոյնն, եղիցի վրան ի վերայ նոցա
[4] Յոյնն, Ոչ եւս
[5] Յոյնն, Զի
[6] Յոյնն, յաղբեւրս կենաց ջրոց. և ջնջեսցէ
[7] Յոյնն, զեւթն հրեշտակսն
[8] Յոյնն, յաղօթս, կամ, ընդ աղօթս
[9] Յոյնն, ի ձեռանէ հրեշտակին
[10] Յոյնն, Եւ առ հրեշտակն զխնկանոցն և ելից զնա

[11] Յոյնն, արարածոց որ ի ծովու, որոց էր շունչ. և երրորդ մասն նաւուց ընկղմեցաւ
[12] Յոյնն, Աւշինդր, և երրորդ մասն ջուրց եղեւ յաւշինդր, և բազումք ի մարդկանէ մեռան ի ջուրցն, զի դառնացան
[13] Յոյնն, զի խաւարեսցի
[14] Յոյնն, և տիւն մի՛ ծագեսցէ զերրորդ մասն իւր, և գիշեր
[15] Ոմանք, արծուոյ
[16] Յոյնն, որոց բնակեալ են յերկրի ի մնացելոց ձայնից փողոյն երից հրեշտակաց որ հանդերձեալ են
[17] Բազումք, Եւ եբաց զդուռն անդնդոց, և ելանէր
[18] Յոյնն, օդք ի ծխոյ դբոյն։ (3) Եւ ի ծխոյն

եղանէր մարախ յերկիր. եւ տուաւ
նոցա իշխանութիւն իբրեւ զխայթոցս
4 կարճի. Եւ ասացաւ նոցա զի մի՛ մե-
ղիցեն խոտոյ երկրի [1]եւ մի՛ ամենայն
ծառոց, բայց միայն [2]մարդոյ երկրայ-
նոյ", որ ոչ ունիցին [3]զկնիք ի վերայ
5 ճակատու իւրեանց: Եւ տուաւ նոցա
հրաման զի մի՛ սպանանիցեն զնոսա,
այլ չարչարեսցեն զնոսա ամիսս հինգ.
եւ չարչարանք նոցա իբրեւ զխայթոցս
6 կարճի որ հարկանիցէ զմարդ: Եւ յա-
ւուրսն յայնոսիկ խնդրեսցեն մարդիկ
զմահ, եւ մի՛ գտցեն. եւ ցանկան մե-
ռանել, եւ փախիցէ ի նոցանէ մահ:
7 Եւ նմանութիւն մարախոյն՝ նմանու-
թիւն ձիոյ պատրաստելոյ ի պատե-
րազմ. եւ ի վերայ գլխոց նոցա իբրեւ
զպսակ՝ նմանեալ ոսկւոյ, եւ երեսք
8 նոցա իբրեւ զերեսս մարդոյ. Եւ հերք
նոցա իբրեւ զհերս կնոջ, եւ ատա-
9 մունք նոցա իբրեւ զառիւծու: Եւ ու-
նէին զրահս իբրեւ զզրահս երկաթի.
եւ ձայն թեւոց նոցա իբրեւ զձայն
կառամար ձիոց բազմաց որ արշաւեն
10 ի պատերազմ: Եւ ունէին ագիս ըստ
նմանութեան կարճի, եւ խայթոց յա-
գիս նոցա. եւ ունէին իշխանութիւն
11 չարչարել զմարդիկ ամիսս հինգ: Եւ
ունէին թագաւոր ի վերայ իւրեանց
զհրեշտակն զժոխոց. եւ անուն նորա
Եբրայեցերէն [4]Աղբադոն, որ կոչի [5]ի
12 Հայ բարբառ Կորուստ": Ահաւասիկ վայ
մի էանց, եւ վայք երկու գալոց են:
13 Եւ վեցերորդ հրեշտակն հարկանէր
զփողն, եւ լուայ [6]ձայն ի չորից կեն-
դանեացն՝ որ էին առաջի սեղանոյն"
14 Աստուծոյ, Զի ասէր ցհրեշտակն վե-
ցերորդ որ ունէր զփողն, Լոյծ զչորս
հրեշտակսն զկապեալս ի վերայ գետոյն
15 մեծի Եփրատայ: Եւ լուծան չորք
հրեշտակքն պատրաստեալք ի ժամ եւ
յօր եւ յամիս եւ ի տարի, զի սպան-
16 ցեն զերրորդ մասն մարդկան: Եւ հա-
մարք հեծելոց զօրաց նոցա [7]բեւրք
բիւրուց եւ հազարք հազարաց լուայ"
17 զթիւ նոցա: Եւ [8]տեսի ձիս ի տես-
լեանն, եւ հեծեալս ի նոսա՝ որք ու-
նէին զրահս հրեղէնս եւ [9]յակինթս
հրդեհեալս ծծմբով". եւ գլուխք ձիոցն
իբրեւ զգլուխս առիւծուց. եւ ի բե-
րանոյ նոցա հուր ելանէր եւ ծուխ
18 եւ ծծումբ: Եւ [10]ի հարուածոցս յայս-
ցանէ" մեռաւ երրորդ մասն մարդկան՝
ի հրոյն եւ ի ծխոյն եւ ի ծծմբոյն որ
19 ելանէր ի բերանոյ նոցա: Զի [11]իշխա-
նութիւն ի բերանս է նոցա եւ յագիս
նոցա, եւ ագիք նոցա նմանութիւն
օձի. եւ ունէին գլուխս որով [12]սա-
20 տակէին զանիրաւս": Եւ այլք ի մարդ-
կանէ որ ոչ մեռան ի հարուածոցս
յայսցանէ՝ ոչ ապաշխարեցին եւ ոչ
դարձան ի գործոց ձեռաց իւրեանց,
յերկրպագութենէ դիւաց եւ կռոց յոս-
կեղինաց եւ յարծաթեղինաց եւ ի
պղնձոյ եւ ի քարէ եւ ի փայտէ, որք
ոչ տեսանել կարեն եւ ոչ լսել եւ ոչ
21 գնալ. Եւ ոչ ապաշխարեցին ի մար-
դասպանութենէ եւ ի դեղատուութենէ
եւ ի պոռնկութենէ եւ ի գողութենէ
իւրեանց:

## ԳԼ. Ժ

1 Եւ տեսի այլ հրեշտակ զօրաւոր զի
իջանէր յերկնից, եւ զգեցեալ էր ամպ,
եւ ծիածան ի գլուխ նորա. եւ երեսք
նորա իբրեւ զարեգակն, եւ ոտք նո-
2 րա որպէս սիւն հրոյ: Եւ ունէր ի
ձեռին իւրում գրկոյք մի բացեալ. եւ
եդ զոտն իւր զաջ ի վերայ ծովու, եւ
3 զձախն ի վերայ երկրի: Եւ աղաղակ-
եաց ի ձայն մեծ, գոչեաց իբրեւ զա-
ռիւծ. եւ յորժամ աղաղակեաց, խօ-
սեցան եւթն որոտմունք յիւրեանց
4 ձայնս: Եւ յորժամ խօսեցան եւթն
որոտմունքն, կամէի գրել. եւ լուայ
ձայն յերկնից զի ասէր, Կնքեա զոր
խօսեցան եւթն որոտմունքն, եւ մի՛
5 գրեր: Եւ հրեշտակն զոր տեսի, որ եդ
զոտն իւր ի վերայ ծովու եւ զմեւսն
ի ցամաքի, համբարձ զձեռն իւր զաջ

---

[1]Բազումք, և մի՛ ամենայն դալարւոյ, և
[2]Յոյնն, մարդկան
[3]Բազումք, զկնիք Աստուծոյ
[4]Ըստ Եբրայեցին, Աբադդոն
[5]Յոյնն, ի Յոյն բարբառ Ապողղիոն
[6]Ի Յունականն, ոմանք՝ ձայն մի ի չորից եղջերաց սեղանոյն ոսկւոյ որ առաջի. այլք՝ ձայն մի յեղջերաց սեղանոյն, են. այլք՝ մի ի սեղանոյն, են.
[7]Յոյնն, երկու բեւրք բիւրոց, և լուայ
[8]Յոյնն, այսպէս տեսի
[9]Յոյնն, յակնթեղէնս և ծծմբեղէնս
[10]Ոմանք, յերից հարուածոց աստի
[11]Ոմանք, իշխանութիւն ձիոցն
[12]Յոյնն, վնասէին

6 յերկինս. Եւ երդուաւ ի կենդանին
յաւիտենից որ [1]հաստատեաց զերկիր
եւ որ ի նմա, զի ոչ եւս կայ՟ այլ ժա-
7 մանակ. Այլ յաւուրս ձայնի եւթնե-
րորդ հրեշտակին, յորժամ հարցէ
զփողն, կատարեսցի խորհուրդն Աս-
տուծոյ որ աւետարանեցաւ [2]ի ձեռն
ծառայից իւրոց մարգարէիցն։
8 Եւ ձայնն զոր լուայ յերկնից՝ դար-
ձեալ խօսեցաւ ընդ իս եւ ասէ, Երթ,
առ զգրկոյսն զոր ունի հրեշտակն բաց-
եալ ի ձեռին իւրում, եւ կայ ի վերայ
9 ծովու եւ ցամաքի։ Եւ ես երթեալ
[3]առ հրեշտակն՝ խնդրեցի ի նմանէ՟.
եւ ասէ ցիս, Առ զսա եւ կեր զդոյն,
եւ դառնասցի յորովայն քո, այլ ի բե-
10 րան քո է քաղցր իբրեւ զմեղր։ Եւ
առի զգրկոյսն [4]բացեալ ի հրեշտակէն՟
եւ կլայ զնա. եւ էր ի բերան իմ որ-
պէս մեղր. եւ յորժամ կերայ, դառ-
11 նացաւ որովայն իմ։ Եւ ասէ ցիս,
Հասանէ քեզ դարձեալ մարգարէանալ
ի ժողովուրդս եւ ի հեթանոսս եւ ի
լեզուս եւ ի թագաւորս [5]երկրի։

ԳԼ. ԺԱ

1 Եւ տուաւ ինձ եղէգն նման գաւա-
զանի. եւ կայր հրեշտակն եւ ասէր
ցիս, Արի եւ չափեա զտաճարն Աս-
տուծոյ եւ զսեղանն եւ զերկրպագուսն
2 որ ի նմա։ Եւ զգաւիթն որ արտաքոյ
տաճարին՝ թող զնա եւ մի՛ չափեր,
զի տուեալ է զնա հեթանոսաց. եւ
զքաղաքն սուրբ կոխեսցեն ամիսս քա-
3 ռասուն եւ երկուս։ Եւ տաց երկուց
վկայից իմոց եւ մարգարէասցին ա-
ւուրս հազար երկերիւր եւ վաթսուն՝
4 զգեցեալ քուրձ։ Սոքա են երկու ձի-
թենիքն եւ երկու ճրագք, որ կան
5 առաջի [6]Աստուծոյ [7]յերկրի։ Եւ որք
կամիցին վնասել նոցա, հուր ելցէ ի
բերանոյ նոցա եւ կերիցէ զթշնամիս
նոցա. եւ որք կամիցին մեղանչել նո-
6 ցա՝ այսպէս սատակեսցին։ Սոքա ու-
նին իշխանութիւն փակել զերկինս զի
մի՛ տեղասցէ զաւուրս մարգարէու-
թեան նոցա. եւ ունին իշխանութիւն
ի վերայ ջուրց դարձուցանել զնոսա
յարիւն, եւ հարկանել զերկիր յամե-
նայն հարուածս՝ քանիցս անգամ եւ
7 կամիցին։ Եւ յորժամ կատարեսցեն
[8]զամենայն աւուրս վկայութեան՟ իւր-
եանց, յայնժամ գազանն որ ելանէ
յանդնդոց՝ տացէ ընդ նոսա պատե-
րազմ, եւ յաղթեսցէ նոցա եւ սպանցէ
8 զնոսա։ Եւ դի նոցա [9]անկեալ կայցէ
ի մէջ հրապարակաց քաղաքին նոցա
մեծի՟, որ անուանեալ կոչի ըստ հոգ-
ւոյն Սոդոմ եւ Եգիպտոս, ուր եւ
9 Տէրն [10]նոցա խաչեցաւ։ Եւ տեսցեն
զնոսա ամենայն ցեղք եւ ժողովուրդք
եւ ամենայն լեզուք եւ հեթանոսք,
զի դի նոցա անկեալ կայցէ զերիս
[11]աւուրս. եւ ոչ տացեն թաղել ի
10 գերեզմանս զոսկերս նոցա։ Եւ որ
բնակեալ են յերկրի՝ ուրախ լինին եւ
խնդան ի վերայ նոցա, մինչեւ ընծայս
եւ պատարագս տանել միմեանց. վասն
զի սոքա երկոքին մարգարէքս [12]չար-
չարեսցեն զբնակիչս երկրի։
11 Եւ յետ երից աւուրց եւ կիսոյ հոգի
կենդանի յԱստուծոյ [13]մտցէ ի նոսա.
եւ [14]յարիցեն կացցեն՟ ի վերայ ոտից
իւրեանց, եւ ահ եւ երկեւղ մեծ ան-
կաւ ի վերայ ամենեցուն որ տեսինն
12 զնոսա։ Եւ [15]լուայ զձայն մեծ որ
ասէր ցնոսա, [16]Վերացէք՝ ելէք աստ՟.
եւ ելին յերկինս ամպովք, եւ տեսին
13 զնոսա թշնամիք իւրեանց։ Եւ ի ժա-
մուն յայնմիկ շարժումն մեծ եղեւ, եւ
տասներորդ մասն քաղաքին ընկղմե-
ցաւ, եւ մեռան ի շարժմանէն արք
եւթն հազար. [17]եւ յետ այնորիկ ահ
մեծ եղեւ յամենեսեան՟ եւ փառս տա-
14 յին Աստուծոյ երկնաւորի։ Ահաւասիկ

[1]Յոյնն, Հաստատեաց զերկինս և որ ի նմա, և զերկիր և որ ի նմա, և զծով և որ ի նմա, զի ոչ եւս իցէ
[2]Ի Յոյնն պակասէ
[3]Յոյնն, առ հրեշտակն, ասացի ցնա, Տուր ինձ զգրկոյսն
[4]Յոյնն, ի ձեռանէ հրեշտակին
[5]Յոյնն, բազումս
[6]Բողոքականք, Տեառն
[7]Յոյնն, երկրի
[8]Յոյնն, զվկայութիւն
[9]Յոյնն, ի հրապարակի քաղաքին մեծի
[10]Ոմանք, մեր
[11]Յոյնն, աւուրս և կէս
[12]Յոյնն, չարչարեցին
[13]Յոյնն, եմուտ
[14]Յոյնն, կացին
[15]Բողոքականք, լուան
[16]Յոյնն, Ելէք այսր
[17]Յոյնն, և որք մնացինն՝ զահի հարան

վայն երկրորդ էանց, եւ վայն երրորդ
գալոց է վաղվաղակի։
15 Եւ յորժամ եւթներորդ հրեշտակն
հարկանէր զփողն, [1]եղեւ ձայն յերկինս
եւ ասէ՝, Եղեւ թագաւորութիւն [2]ա-
մենայն տիեզերաց Տեառն մերոյ եւ
Քրիստոսի իւրոյ. եւ թագաւորեսցէ
[2]ի վերայ ամենայնի՝ յաւիտեանս յա-
16 ւիտենից։ Եւ քսան եւ չորք երի-
ցունքն որ նստէին յաթոռս իւրեանց
առաջի Աստուծոյ՝ անկանէին ի վերայ
երեսաց իւրեանց եւ երկիր պագանէին
17 [2]Տեառն Աստուծոյ, եւ ասէին, Գո-
հանամք զքէն, Տէր Աստուած Ամե-
նակալ, որ էն եւ [3]էս եւ[4] առեր զզօ-
րութիւն քո մեծ եւ թագաւորեցեր։
18 Եւ հեթանոսք բարկացան, եւ եկն
բարկութիւն քո, եւ ժամանակ մեռե-
լոց զի դատեսցին. եւ տաս վարձս
ծառայից քոց մարգարէից եւ սրբոց,
երկիւղածաց անուան քո, փոքունց
եւ մեծամեծաց, եւ ապականես զա-
պականիչս երկրի։
19 Եւ բացաւ տաճարն Աստուծոյ որ
յերկինս, եւ երեւեցաւ [5]տապանակն
[6]Աստուծոյ ի տաճարն իւր, եւ եղեն
փայլատակմունք եւ ձայնք եւ որոտ-
մունք եւ շարժումն եւ կարկուտ մե-
ծամեծ։

## ԳԼ. ԺԲ

1 Եւ նշան մեծ երեւեցաւ յերկինս. կին
մի արկեալ զիւրեւ զարեգակն, եւ
լուսին ի ներքոյ ոտից նորա. եւ ի վե-
րայ գլխոյ նորա պսակ աստեղեայ յեր-
2 կոտասանից։ Եւ էր յղի, եւ ճչէր
յերկնելն, եւ բազում վշտօք մերձ էր
ի ծնանել։
3 Եւ երեւեցաւ այլ նշան յերկինս, եւ
ահաւասիկ վիշապ մի մեծ հրեղէն,
որոյ էին գլուխք եւթն եւ եղջեւրք
տասն. եւ ի վերայ գլխոց նորա եւթն
4 խոյրք։ Եւ տուտն նորա քարշէր զեր-
րորդ մասն աստեղաց երկնից, եւ արկ
զնոսա յերկիր. եւ վիշապն կայր ա-
ռաջի կնոջն որ հանդերձեալ էր ծնա-
նել, զի յորժամ ծնցի կինն զորդի իւր,
5 կլցէ զնա [2]վիշապն։ Եւ ծնաւ [2]կինն
արու որ հանդերձեալ է հովուել զա-
մենայն հեթանոսս գաւազանաւ եր-
կաթեաւ. եւ յափշտակեցաւ որդի նո-
րա առ Աստուած եւ առ աթոռ նորա։
6 Եւ կինն փախեաւ յանապատ ուր էր
տեղի նմա պատրաստեալ յԱստուծոյ,
զի կերակրեսցի անդ աւուրս հազար
երկերիւր եւ վաթսուն։
7 Եւ եղեւ պատերազմ յերկինս. Մի-
քայէլ եւ հրեշտակք իւր կռուէին ընդ
վիշապին. եւ վիշապն պատերազմէր
8 [7]զօրօք իւրովք՝։ Եւ ոչ կարացին կալ
ընդդէմ, եւ տեղի ոչ գտաւ նոցա յեր-
9 կինս։ Եւ անկաւ վիշապն մեծ, օձն
առաջին, որ անուանեալ կոչի [8]Բէեղ-
զեբուղ եւ Սատանայ որ մոլորեցոյց
զամենայն տիեզերս [2]երկրի. եւ հրեշ-
10 տակք նորա ընդ նմա անկան։ Եւ
լուայ ձայն մեծ յերկնից որ ասէր,
Արդ եղեւ զօրութիւն եւ փրկութիւն
եւ արքայութիւն Աստուծոյ մերոյ,
եւ իշխանութիւն Օծելոյ նորա. զի
անկաւ չարախօսն եղբարց մերոց, որ
չարախօսէր զնոցանէ առաջի Աստու-
11 ծոյ զտիւ եւ զգիշեր։ Եւ նոքա յաղ-
թեցին նմա արեամբ Գառինն, եւ բա-
նիւ վկայութեան [9]նորա. եւ ոչ հա-
ճեցան ընդ վիշապն՝ մինչեւ ի մահ։
12 Վասն այսորիկ [10]ուրախ լիցին երկինք՝
եւ ամենայն որ բնակեալ [11]են ի նմա.
[12]վա՛յ երկրի եւ ծովու զի անկաւ Բան-
սարկուն առ ձեզ, որ ունի զցասումն
բազում, [13]եւ կացցէ առ սակաւ մի
ժամանակս՝։
13 Եւ յորժամ ետես վիշապն թէ ան-
կաւ յերկիր, զհետ եղեւ կնոջն որ
14 ծնաւ զմանուկն արու։ Եւ տուան
կնոջն երկու թեւք արծուոյ մեծի զի
թռիցէ յանապատ ի տեղի իւր. ուր
կերակրէր անդ ժամանակ եւ ժամա-
նակս եւ կէս ժամանակի յերեսաց օձին։

---

[1]Յոյնն, եղեն ձայնք մեծամեծք յերկինս որ ա-
սէին
[2]Ի Յունէն պակասէ
[3]Յոյնն, որ էրն
[4]Ոմանք յաւելուն, որ գալոցն է,
[5]Յոյնն, տապանակն ուխտին
[6]Ի Յունէն, ոմանք՝ իւրոյ, այլք՝ Տեառն

[7]Յոյնն, և հրեշտակք նորա
[8]Յոյնն, Բանսարկու
[9]Յոյնն, իւրեանց. և ոչ սիրեցին զոգի իւրեանց
[10]Յոյնն, ուրախ լերուք, երկինք,
[11]Յոյնն, էք
[12]Ոմանք, վա՜յ բնակչաց
[13]Յոյնն, գիտացեալ եթէ ունի սակաւ ժամանակ

15 Եւ եհեղ օձն ի բերանոյ իւրմէ զհետ
16 կնոջն ջուր զի ընկղմեսցէ զնա ։ Եւ
օգնեաց երկիր կնոջն, եւ եբաց երկիր
զբերան իւր եւ եկուլ զջուրն զոր
17 եհեղ վիշապն ի բերանոյ իւրմէ ։ Եւ
ցասեաւ վիշապն ընդ կնոջն, եւ գնաց
պատերազմել ընդ այլ զաւակս նորա
որք պահէին զպատուիրանս Աստու-
ծոյ, եւ ունէին զվկայութիւնն Յիսու-
18 սի ։ Եւ [1]կայ ի վերայ աւազոյ ծովու ։

## ԳԼ․ ԺԳ

1 Եւ տեսի զի ելանէր ի ծովէն գազան,
եւ ունէր գլուխս եւթն եւ եղջեւրս
տասն, եւ ի վերայ եղջերաց նորա
տասն խոյր, եւ ի վերայ գլխոյ նորա
2 անուն հայհոյութեան ։ Եւ գազանն
զոր տեսի՝ նման ընձու, եւ ոտք նո-
րա իբրեւ զարջու, եւ բերան նորա
որպէս զառիւծու ․ եւ ետ նմա վիշապն
զզօրութիւն իւր եւ զաթոռ իւր եւ
3 զիշխանութիւն մեծ ։ Եւ մի ի գլխոց
նորա [2]վիրաւորեալ էր՟ ի մահ ․ եւ վէր
մահուան նորա ողջանայր ․ եւ զար-
մացաւ ամենայն երկիր ընդ գազանն,
[3]զի ետ նմա վիշապն զթագաւորու-
4 թիւն իւր՟ ։ Եւ երկիր պագին վիշապին
որ ետ զիշխանութիւնն գազանին, [4]եւ
ասէին՟, Ո՞վ իցէ նման գազանիս ․
կամ ո՞վ կարիցէ պատերազմել ընդ
5 դմա ։ Եւ տուաւ նմա բերան խօսել
զմեծամեծս եւ զհայհոյութիւն ․ եւ
տուաւ նմա իշխանութիւն զամիսս
6 քառասուն եւ երկու ։ Եւ եբաց զբե-
րան իւր հայհոյութեամբ առ Աստուած,
եւ հայհոյեաց զանուն նորա եւ զխո-
րանն նորա, եւ [5]զերկնային խորանն ։
7 Եւ՟ տուաւ նմա իշխանութիւն ի վե-
րայ ամենայն ազգաց եւ լեզուաց եւ
8 ժողովրդոց ։ Զի երկիր պագցեն նմա
ամենայն որ բնակեալ են ընդ երեսս
երկրի ․ որոց ոչ են գրեալ անուանք
նոցա ի գպրութիւն կենաց Գառինն
9 զենլոյ ի սկզբանէ աշխարհի ։ Ոյք ու-
10 նին ականջս լսելոյ՝ լուիցեն ։ [6]Զի են
ոմանք՝ որք ի գերութիւն վարեսցին,
եւ են ոմանք՝ որ սրով մեռցին, եւ են
ոմանք՝ որ անձամբ զանձինս սպանա-
նիցեն՟ ․ աստ է համբերութիւն եւ հա-
ւատ սրբոց ։
11 Եւ տեսի այլ գազան զի ելանէր
յերկրէ, եւ ունէր եղջեւրս երկու
նման գառինն, եւ խօսէր իբրեւ զվի-
12 շապն ։ Եւ զիշխանութիւն զամենայն
զառաջնոյ գազանին գործէր առաջի
նորա ․ եւ առնէր զերկիր եւ զամե-
նայն բնակիչս նորա զի երկիր պագա-
նիցեն գազանին առաջնոյ, [7]մինչեւ
13 ողջացի վէր մահու նորա՟ ։ Եւ առնէր
նշանս բազումս, եւ տայր հրոյ իջանել
14 յերկնից յերկիր առաջի մարդկան ։ Եւ
մոլորեցուցանէր զորս բնակեալ են
յերկրի՝ նշանօքն որ տուեալ են ի ձեռս
նորա, առնել առաջի գազանին ․ [8]ասեն
ցնա բնակիչք երկրի, Արա զպատկեր
գազանին, որ ի վիրաց սրոյն եկեաց՟ ։
15 Եւ տուաւ նմա [3]իշխանութիւն զի
տացէ հոգի պատկերի գազանին, եւ
զի խօսեսցի պատկերն ․ եւ երկիր պագ-
ցեն նմա ամենայն բնակիչք երկրի,
եւ որ ոչ պագցէ երկիր պատկերի գա-
16 զանին՝ սպանցէ զնա ։ Եւ [9]արասցէ
զամենայն՟, զփոքունս եւ զմեծամեծս
եւ զմեծատունս եւ զաղքատս, եւ
զազատս եւ զծառայս, զի տացէ նոցա
դրոշմ յաջու ձեռին [10]եւ ի վերայ ճա-
17 կատու նոցա ։ Եւ ոչ ոք կարասցէ
գնել եւ վաճառել, եթէ ոչ ունիցի
զդրոշմ [10]զրոյն՝ եւ՟ զանուն գազանին
18 [10]եւ զթիւ անուան նորա ։ Աստ է ի-
մաստութիւն ․ որ ունի միտս՝ համա-
րեսցի զթիւ գազանին ․ [11]թիւ եղեալ
մարդոյ, եւ թիւ անուան նորա է
այս,՟ վեց հարեւր վաթսուն եւ վեց ։

---

[1]Ոմանք, կացի
[2]Յոյնն, էր որպէս վիրաւորեալ
[3]Ի Յունին պակասէ
[4]Յոյնն, և երկիր պագին գազանին և ասէին
[5]Յոյնն, զորս բնակեն յերկինս ։ (7) Եւ տուաւ նմա առնել պատերազմ ընդ սուրբս և յաղթել նոցա, և
[6]Յոյնն, Եթէ ոք ի գերութիւն վարէ, ի գերութիւն վարեսցի ․ եթէ ոք սրով սպանանէ, սրով սպանցի
[7]Յոյնն, որոյ ողջացեալ էին վէրք մահուան նորա
[8]Յոյնն, և ասէր ցորս բնակեալ են ի վերայ երկրի առնել պատկեր գազանին որ ունի զվէրս սրոյն, և եկեաց
[9]Յոյնն, առնէ զամենեսեան
[10]Յոյնն, կամ
[11]Յոյնն, զի թիւ մարդոյ է, և թիւ նորա

## ԳԼ. ԺԴ

1 Եւ տեսի, եւ ահա Գառն կայր ի վե-
րայ լերինն Սիովնի. եւ ընդ նմա
հարեւր քառասուն եւ չորք հազարք,
որ ունէին զանուն [1]նորա եւ անուն"
Հօր նորա գրեալ ի վերայ ճակատուց
2 նոցա: Եւ լուայ ձայն յերկնից որպէս
զձայն ջուրց բազմաց եւ ձայն որոտ-
ման մեծի. եւ լուայ իբրեւ զձայն քնա-
րահարաց, զի հարկանիցեն զքնարս
3 իւրեանց: Եւ երգէին զերգս նորս ա-
ռաջի աթոռոյն եւ առաջի չորից կեն-
դանեացն եւ առաջի երիցանցն. եւ
ոչ ոք կարէ գիտել զերգս նոցա, բայց
միայն հարեւր քառասուն եւ չորս
հազարքն, որք ազատեալ են յերկրէ:
4 Սոքա են որք ընդ կանայս ոչ խառ-
նակեցան, եւ են կուսանք. սոքա զկնի
երթան Գառինն ուր եւ երթիցէ. սո-
քա [2]ընտրեցան ի մարդկանէ առաջի"
5 Աստուծոյ եւ Գառինն: Եւ ի բերան
նոցա ոչ գտաւ սուտ, զի անբիծք են[3]:
6 Եւ տեսի այլ հրեշտակ թռուցեալ
ի մէջ երկնից. եւ ունէր աւետիս յա-
ւիտենական աւետարանել [4]ամենայն
ազգաց եւ լեզուաց որ բնակեալ են
7 յերկրի": Եւ ասէր ի ձայն մեծ, Եր-
կերուք յԱստուծոյ եւ տուք փառս
նմա, զի եկն ժամ դատաստանի նորա.
եւ երկիր պագէք Արարչին երկնի եւ
երկրի եւ ծովու եւ աղբերաց ջուրց:
8 Եւ այլ հրեշտակ երկրորդ գայր զհետ
նորա եւ ասէր, Անկաւ, անկաւ Բա-
բելոն մեծն, [5]ի գինւոյ արբեցութենէ՝
ի ցասմանէ՝ ի պոռնկութենէ իւրմէ՝
որ արբեցոյց զամենայն հեթանոսս":
9 Եւ այլ հրեշտակ երրորդ գայր զհետ
նոցա, եւ ի ձայն մեծ ասէր, Ով ոք
երկրպագեաց գազանին եւ պատկերի
նորա, եւ կամ զդրոշմ նշանի նորա առ
ի ճակատ իւր եւ կամ ի վերայ աջոյ
10 ձեռին իւրոյ, Այնպիսին արբցէ ի բա-
ժակէ ցասմանն Աստուծոյ, արկելոյ
յանապակէ բարկութեան բաժակին,
եւ տանջեսցի հրով եւ ծծմբով առաջի
11 [6]Աստուծոյ եւ Գառինն: Եւ ծուխ
[7]նոցա ելցէ" յաւիտեանս յաւիտենից.
եւ ոչ ունին [8]հանգիստ որք երկիր
պագին գազանին ի տուէ եւ ի գիշերի,
եւ որք երկիր պագին պատկերին, եւ
12 առին զդրոշմ եւ զանուն նորա": Եւ
համբերութիւն սրբոցն աստ է. [9]այս՝
որք պահեն զպատուիրանս Աստուծոյ
13 եւ զհաւատս Յիսուսի: Եւ լուայ ձայն
յերկնից որ ասէր ցիս, Գրեա, Երանի
մեռելոցն որք ի Տէր ննջեցին՝ [10]այժմիկ
վաղվաղակի". զայս ասէ Հոգին, քան-
զի հանգեան յաշխատութենէ իւրեանց.
[11]բայց միայն" գործք իւրեանց չոգան
զհետ նոցա:
14 Եւ տեսի, եւ ահա ամպ սպիտակ,
եւ ի վերայ ամպոյն նստէր նման Որդ-
ւոյ մարդոյ, եւ ի գլուխ իւր պսակ
ոսկի, եւ ի ձեռին իւրում ունէր գե-
րանդի սրեալ:
15 Եւ այլ հրեշտակ ելանէր յերկնից,
աղաղակէր ի ձայն մեծ եւ ասէր, Որ
նստիդ ի վերայ ամպոյդ՝ առաքեա
զգերանդիդ քո եւ հնձեա, զի եկն ժա-
մանակ հնձոց, եւ հասեալ են հունձք
16 երկրի: Եւ արկ որ նստէր ի վերայ
ամպոյն՝ զգերանդին իւր յերկիր, եւ
հնձէր զամենայն բնակիչս երկրի:
17 Եւ այլ հրեշտակ ելանէր ի տաճարէն
որ յերկինս, եւ ունէր եւ սա գերանդի
18 սրեալ: Եւ այլ հրեշտակ ելանէր ի սե-
ղանոյն որ ունէր իշխանութիւն ի վե-
րայ հրոյ, եւ աղաղակեաց ի ձայն մեծ
առ հրեշտակն որ ունէր զգերանդին
սրեալ, եւ ասէր, [12]կթեա զողկոյզս
յայգւոյ երկրէ, զի հասեալ է խաղողդ
19 ի դմա: Եւ արկ հրեշտակն զգերանդի
իւր յերկիր, եւ կթէր զխաղող նորա,
եւ արկանէր [13]ի հնձանն Աստուծոյ
20 ի մեծ: Եւ կոխեցաւ հնձանն արտա-
քոյ քաղաքին, եւ ելանէր ի հնձանէն

---

[1] Յոմանս պակասէ
[2] Յոյնն, գնեցան ի մարդկանէ յերախայրիս
[3] Ոմանք յաւելուն, առաջի աթոռոյն Աստուծոյ
[4] Յոյնն, որոց բնակեալ են ի վերայ երկրի, ա-
մենայն ազգաց և ազանց և լեզուաց և ժողո-
վրդոց
[5] Յոյնն, զի ի գինւոյ ցասման պոռնկութեան
իւրոյ արբոյց ամենայն հեթանոսաց

[6] Յոյնն, հրեշտակաց սրբոց
[7] Յոյնն, տանջանաց նոցա ելանէ
[8] Յոյնն, հանգիստ ի տուէ և ի գիշերի որք երկիր
պագանեն գազանին և պատկերի նորա, և որ
միանգամ առնու զդրոշմ անուան նորա
[9] Ի Յունէն, յոմանս պակասէ, յայլս՝ աստ
[10] Յոյնն, այսուհետեւ
[11] Յոյնն, զի
[12] Յոյնն, Ձգեա զգերանդիդ սրեալ և կթեա
[13] Յոյնն, ի հնձան ցասմանն

արիւն մինչեւ ի սանձս [1]ձիոյն՝ եւ եր-
կայնութիւն նորա" հազար եւ վեց
հարեւր ասպարէզ։

## ԳԼ· ԺԵ

1 Եւ տեսի այլ նշան յերկինս մեծ եւ
սքանչելի · հրեշտակս եւթն որք ու-
նէին եւթն վէրս դկնի · զի նոքօք կա-
2 տարէր բարկութիւնն Աստուծոյ։ Եւ
տեսի որպէս ծով ապակեղէն խառնեալ
հրով · եւ որք յաղթեցին գազանին եւ
պատկերի նորա եւ թուոյ անուան
նորա [2]եւ դրոշմի նորա", նոքա կային
ի վերայ ծովուն ապակեղինի, եւ ու-
3 նէին զքնարս Աստուծոյ · Եւ երգէին
զերգս Մովսիսի [3]առաջի Աստուծոյ,
եւ զերգս Գառինն՝ ասելով թէ Մեծա-
մեծ եւ սքանչելի են գործք քո, Տէր
Աստուած Ամենակալ, արդար եւ ճշմա-
րիտ են ճանապարհք քո, Թագաւոր
4 [4]ամենայն [5]հեթանոսաց։ Եւ ո՞վ ոք
ոչ [6]երկիցէ եւ փառաւորեսցէ [7]զսուրբ
անուն" քո · զի դու միայն ես սուրբ,
[4]եւ արժանի երկրպագելոյ," զի ամե-
նայն հեթանոսք եկեսցեն եւ երկիր
պագցեն առաջի քո, [8]Տէր, յորժամ
արդարութիւն քո յայտնեսցի"։
5 Եւ յետ այսորիկ տեսի եւ բացաւ
տաճարն խորանին վկայութեան որ
6 էր յերկինս։ Եւ ելանէին ի տաճարէն
եւթն հրեշտակք որք ունէին եւթն
հարուածս, եւ զգեցեալ էին կտաւս
մաքուրս եւ պայծառս, եւ գօտեւոր-
եալ էին առ ստեամբք իւրեանց գօ-
7 տիս ոսկեղէնս։ Եւ [9]ի չորից կենդան-
եացն [10]տուաւ եւթն հրեշտակացն
եւթն [11]սկաւառակս լի ցասմամբն Աս-
տուծոյ կենդանւոյն յաւիտեանս յա-
8 ւիտենից։ Եւ լցաւ տաճարն ծխով
փառացն Աստուծոյ եւ զօրութեան նո-
րա · եւ ոչ ոք կարէր մտանել ի տա-

[1] Յոյնն, ձիոց ընդ
[2] Յոմանս պակասէ
[3] Յոյնն, ծառայի
[4] ի Յոյնն պակասէ
[5] Կամ, ազգաց · այլք՝ յաւիտենից · և այլք՝ սրբոց
[6] Յոյնն, երկիցէ ի քէն, Տէր,
[7] Յոյնն, զանուն
[8] Յոյնն, զի արդարութիւն քո յայտնեցաւ
[9] Յոյնն, մին ի չորից
[10] Յոյնն, ետ
[11] Յոյնն, սկաւառակս ոսկեղէնս

ճարն՝ մինչեւ կատարեսցին եւթն
հարուածքն եւթն հրեշտակացն։

## ԳԼ· ԺԶ

1 Եւ լուայ ձայն մեծ ի տաճարէն զի
ասէր ցեւթն հրեշտակսն, Երթայք,
հեղէք զեւթն ռկաւառակսդ ցասմանն
Աստուծոյ յերկիր։
2 Եւ գնաց [12]առաջինն հրեշտակն" եւ
եհեղ զսկաւառակ իւր յերկիր · եւ ե-
ղեն հարուածք չարաչարք ի վերայ
մարդկան որ ունէին զդրոշմ գազա-
նին, եւ երկիր պագին պատկերի նորա։
3 Եւ [13]երկրորդ հրեշտակն" եհեղ
զսկաւառակ իւր ի ծով, եւ [14]դարձան
ջուրքն յարիւն մեռեալ". եւ ամենայն
շունչ կենդանի որ էր ի ծովու՝ սա-
տակեցաւ։
4 Եւ [15]երրորդ հրեշտակն" եհեղ զսկա-
ւառակ իւր ի գետս եւ յաղբեւրս ջուրց,
5 եւ եղեւ արիւն։ Եւ լուայ [16]ի հրեշ-
տակէն զի ասէր, [17]Արդար է՝ որ էնն
եւ է, եւ սուրբ ի գործս իւր՝ զի այս-
6 պէս դատեցաւ". Վասն զի զարիւն
սրբոց եւ զարիւն մարգարէիցն հեղին
[18]ամպարիշտք · վասն այնորիկ արիւն
7 ետ ըմպել նոցա ըստ արժանւոյն"։ Եւ
լուայ ի սեղանոյ անտի զի ասէր, Այո,
Տէր Աստուած Ամենակալ, արդար եւ
ճշմարիտ են դատաստանք քո։
8 Եւ [19]չորրորդ հրեշտակն" եհեղ [20]ի
սկաւառակէ իւրմէ" ի վերայ արեգա-
9 կան։ Եւ տուաւ նմա խորշակահար
առնել զմարդիկ հրով · եւ տապացան
մարդիկ ի տապ մեծ, եւ հայհոյեցին
[21]զԱստուած որ ունի իշխանութիւն
ի վերայ հարուածոցս այսոցիկ · եւ ոչ
ապաշխարեցին [22]ի փառս Աստուծոյ։
10 Եւ [23]հինգերորդ հրեշտակն" եհեղ

[12] Յոյնն, առաջինն
[13] Բազումք, երկրորդն
[14] Յոյնն, եղեւ արիւն իբրեւ զմեռելոյ
[15] Բազումք, երրորդն
[16] Յոյնն, ի հրեշտակէն ջուրց
[17] Յոյնն, Արդար ես որ էն և որ էրն, սուրբդ, զի այսպէս դատեցար
[18] Յոյնն, և արիւն ետուր նոցա ըմպել զի ար-ժանի են
[19] Բազումք, չորրորդն
[20] Յոյնն, զսկաւառակ իւր
[21] Յոյնն, զանուն Աստուծոյ
[22] Յոյնն, տալ փառս
[23] Բազումք, հինգերորդն

[1]ի սկաւառակէ իւրմէ" ի վերայ ա-
թոռոյ գազանին, եւ եղեւ թագաւո-
րութիւն նորա խաւարեալ. եւ ծամէին
11 զլեզուս իւրեանց յախտէ ցաւոցն, Եւ
հայհոյեցին զԱստուած երկնից ի ցաւոց
իւրեանց եւ յախտէ դառնութեանն, եւ
ոչ ապաշխարեցին ի գործոց իւրեանց։
12 Եւ [2]վեցերորդ հրեշտակն" եհեղ [1]ի
սկաւառակէ իւրմէ" ի վերայ գետոյն
մեծի Եփրատայ, եւ ցամաքեցան ջուրք
նորա զի պատրաստեսցի ճանապարհ
13 [3]թագաւորի եկեալն" արեւու։ Եւ տեսի
[4]զի ելանէին" ի բերանոյ վիշապին եւ
ի բերանոյ գազանին եւ ի բերանոյ
սուտ մարգարէին ոգիք երեք ան-
14 սուրբք իբրեւ գորտս։ Քանզի նոքա
էին ոգիք դիւականք, որք առնէին
զնշանս եւ երթային առ թագաւորս
ամենայն երկրի ժողովել զնոսա ի պա-
տերազմ յօրն մեծ Տեառն Ամենակալի.
15 ([4]քանզի այսպէս ասաց Տէր." Ահա
գամ իբրեւ զգող, երանի որ եցեն ար-
թունք, եւ պահեսցեն զհանդերձս իւր-
եանց. զի մի՛ մերկ շրջեսցին, եւ ե-
16 րեւեսցին ամօթանք իւրեանց.) Եւ
ժողովեսցին զնոսա ի տեղի մի, որ կոչի
Եբրայեցերէն Արմագեդոն։
17 Եւ [5]եւթներորդ հրեշտակն" եհեղ
[1]ի սկաւառակէ իւրմէ" ի վերայ օդոյ.
եւ ել ձայն մեծ [6]յերկնից եւ" յաթոռոյն
18 ասելով, Եղեւ։ Եւ եղեն փայլատակ-
մունք եւ ձայնք եւ որոտմունք. եւ
եղեւ շարժումն մեծ, որպիսի չիք եղ-
եալ ի սկզբանէ յորմէ հետէ եղեւ մարդ
ի վերայ երկրի այնպիսի շարժումն մեծ։
19 Եւ եղեւ քաղաքն մեծ յերիս մասունս,
եւ քաղաքք ազգացն անկան. եւ Բա-
բելոն մեծ յիշեցաւ առաջի Աստուծոյ
տալ նմա զբաժակն գինւոյ ցասման
20 բարկութեան նորա։ Եւ ամենայն
կղզիք փախեան, եւ լերինք ի միջոյ
21 բարձան։ Եւ կարկուտ մեծ իբրեւ կշիռ
տաղանդոյ միոյ իջանէր յերկնից ի վե-
րայ մարդկան. եւ հայհոյեցին մարդիկ
զԱստուած [4]յերկինս վասն հարուածոյ
կարկտին զի մեծ էր [7]հարուածն եւ
սաստիկ"։

ԳԼ. ԺԷ

1 Եւ եկն մի ոմն յեւթն հրեշտակացն
որք ունէին զեւթն սկաւառակսն,
խօսեցաւ ընդ իս եւ ասէ, Եկ այսր,
եւ ցուցից քեզ զդատաստանս մեծ
պոռնկին որ նստի ի վերայ ջուրց բազ-
2 մաց. Ընդ որում պոռնկեցան թագա-
ւորք երկրի, եւ արբեցան բնակիչք
երկրի ի գինւոյ արբեցութեան պոռ-
3 նկութեան նորա։ Եւ առ տարաւ զիս
յանապատ հոգւովն. եւ տեսի կին մի
զի նստէր ի վերայ կարմիր գազանի,
եւ լի էր անուամբ հայհոյութեան, եւ
գազանն զոր տեսի ունէր գլուխս եւթն
4 եւ եղջեւրս տասն։ Եւ կինն զգեցեալ
էր ծիրանիս եւ կարմիրս, եւ զար-
դարեալ ոսկւով եւ մարգարտով եւ
ակամբք պատուականօք, ունելով բա-
ժակ ոսկի ի ձեռին իւրում, եւ լի
էր գարշելի եւ անմաքուր պոռնկու-
5 թեամբ։ Եւ ի ճակատն նորա գրեալ
անուն՝ [8]Խորհրդով մեծն Բաբելոն,
մայր պոռնկաց եւ գարշելեաց երկրի։
6 Եւ տեսի զկինն արբեցեալ յարենէ
սրբոց եւ յարենէ [9]ամենայն վկայիցն".
եւ զարմացայ տեսեալ զնա՝ զարմա-
7 ցումն մեծ։ Եւ ասէ ցիս հրեշտակն,
Ընդէ՞ր զարմացար. ես ասացից քեզ
զխորհուրդս կնոջն, եւ զգազանին որ
բարձեալ ունի զնա. որ ունի զեւթն
8 գլուխս եւ տասն եղջեւրս։ Եւ գա-
զանդ զոր տեսեր, որ էր եւ չէ, եւ
հանդերձեալ է ելանել ի դժոխոց եւ ի
կորուստ երթալ. եւ [10]զարմասցին ա-
մենեքեան" որ բնակեալ են ի վերայ
երկրի որոց ոչ էին գրեալ անուանք
նոցա ի գիր կենաց ի սկզբանէ աշ-
խարհի, [11]զոր տեսանէիր" զգազանն
9 զի էր եւ չէ, եւ մերձ է։ Աստ է [12]ի-
մաստութիւն՝ որ ունի միտս". եւթն
գլուխն եւթն լերինք են, ուր կինն
նստեալ էր ի վերայ նոցա. եւ նոքին

---

[1]Յոյնն, զսկաւառակ իւր
[2]Բազումք, վեցերորդն
[3]Յոյնն, թագաւորաց որ յելիցն
[4]Ի Յոյնսն պակասէ
[5]Բազումք, եւթներորդն
[6]Ի Յոյնսն, ոմանք՝ ի տաճարէն, այլք՝ ի տաճա-
րէն երկնից,

[7]Յոյնն, հարուած նորա՛ յոյժ
[8]Յոյնն, խորհուրդ,
[9]Յոյնն, վկայիցն Յիսուսի
[10]Յոյնն, զարմասցին
[11]Յոյնն, տեսեալ
[12]Յոյնն, միտք որոյ է իմաստութիւն

թագաւորք են եւթն, [1]եւ թագաւորք
10 եւթն գոլով,՝՝ Հինգն անկան, եւ մին
[2]եկաց, եւ մինն ոչ է եկեալ. եւ յոր-
ժամ գայ՝ սակաւիկ մի ժամանակ ունի։
11 Եւ գազանն որ էր եւ չէ, եւ նա ութե-
րորդ է. եւ է յեւթանց անտի, եւ ի
12 կորուստ երթալոց է։ Եւ տասն եղ-
ջեւրն զոր տեսեր՝ տասն թագաւորք են,
որոց չեւ եւս է առեալ զթագաւորու-
թիւն, այլ [3]առնուն եւ կան իշխանք
ի մի ժամ. եւ առնուն նոքա զիշխա-
13 նութիւն՝՝ ընդ գազանին։ Սոքա մի
կամս ունին, եւ զզօրութիւն եւ զիշ-
14 խանութիւն գազանին տան։ Եւ ընդ
Գառինն պատերազմին, եւ Գառնն
յաղթէ նոցա. զի Տէր է [4]նոցա եւ
Թագաւոր թագաւորաց, եւ որք ընդ
նմա՝ կոչեցեալք են, ընտրեալք եւ
15 հաւատացեալք։ Եւ ասաց ցիս, Եւ
ջուրքն զոր տեսեր, ուր նստէր պոռ-
նիկն, ժողովուրդք են եւ բազմու-
16 թիւնք եւ ազգք եւ լեզուք։ Եւ տասն
եղջեւրքն զոր տեսեր [5]գազանին, նո-
քա ատեսցեն զպոռնիկն եւ ատեսցեն
զնա՝՝, եւ զմարմին նորա կերիցեն եւ
17 այրեսցեն զնա հրով։ Քանզի Աստուած
ետ ի սիրտս նոցա առ ի լինել նոցա
մի կամս, եւ տալ զթագաւորութիւն
գազանին մինչեւ կատարեսցի բանն
18 Աստուծոյ։ Եւ կինն զոր տեսեր՝ է
քաղաքն մեծ, որ ունի զթագաւո-
րութիւն ի վերայ թագաւորութեանց
երկրի։

## ԳԼ. ԺԸ

1 Եւ յետ այսորիկ տեսի այլ հրեշտակ
իջեալ յերկնից որ ունէր իշխանու-
թիւն մեծ, եւ երկիր լուսաւորեցաւ
2 ի փառաց նորա։ Եւ աղաղակեաց ի
ձայն մեծ՝ ասելով, [6]Անկաւ Բաբելոն
մեծն, որ եղեալ էր՝՝ բնակութիւն դի-
ւաց եւ արգել ամենայն այսոց պղծոց,
եւ բանտ պահպանութեան ամենայն
3 [7]ոգւոց անսրբից եւ ատեցելոց։ Վասն
զի ի բարկութենէ գինւոյ պոռնկու-
թեան նորա արբին ամենայն ազգք,
եւ թագաւորք երկրի [1]որ ընդ նմա
պոռնկեցան. եւ վաճառականք երկրի
ի նորա զօրութեանն յօրանալոյ մե-
4 ծացան։ Եւ լուայ [8]ձայն յերկնից զի
ասէր, Ելէք ի միջոյ դորա, ժողովուրդ
իմ, զի մի՛ հաղորդ լինիցիք մեղաց դորա,
եւ մի՛ [9]զհարուածս դորա ընդունի-
5 ցիք. Զի հասին կցեցան մեղք դորա
մինչեւ յերկինս. եւ յիշեաց Աստուած
6 զամպարշտութիւնս դորա։ [10]Եւ հա-
տուցանէ՝՝ դմա որպէս եւ հատոյցն
[11]մեզ. եւ [12]առցէ դա՝՝ երկպատիկ
ըստ գործոց իւրոց. եւ զբաժակն որով
խառնեաց՝ խառնեցէք դմա կրկին։
7 Որչափ փառաւորեաց զինքն եւ խայ-
տաց, այնչափ հատուցէք դմա [13]սուգ.
զի ի սրտի իւրում ասէր թէ Յամե-
նայն ժամ նստայց ես թագուհի, եւ
8 այրի ոչ եւս եղէց[14]. Վասն այնորիկ
ի միում աւուր եկեսցեն ի վերայ դորա
հարուածք՝ մահ եւ սուգ եւ սով, եւ
ի հուր այրեսցի. զի հզօր է Տէր Աս-
9 տուած որ դատեցաւն զդա։ Եւ լայցեն
եւ կոծեսցին ի վերայ դորա թագաւորք
երկրի, որք ընդ դմա պոռնկեցան եւ
խաղային. եւ հեծեսցեն, յորժամ տեսա-
ցեն զծուխ կիզման տանջանաց դորա։
10 Ի հեռաստանէ կայցեն վասն երկիւղի
տանջանաց դորա եւ ասասցեն, [15]Վա՜յ
քաղաքիդ մեծի Բաբելոնի, քաղաք
հզօր, զի ի միում ժամու եկին հասին
11 դատաստանք քո։ Եւ վաճառականք
երկրի ողբասցեն եւ սգասցեն ի վերայ
[16]քո, զի զբեռն նոցա ոչ ոք գնէ։
12 [17]Եւ չահք որ ի քէն՝ ոչ եւս իցէ,՝՝
ոսկւոյ եւ արծաթոյ եւ ականց պատ-
ուականաց եւ մարգարտոյ եւ բեհեզոյ
եւ ծիրանւոյ եւ [18]ոսկեթելի եւ որդան,

---

[1]ի Յունին պակասէ
[2]Յոյնն, կայ
[3]Յոյնն, առնուն իշխանութիւն իբրեւ թագա-
գաւորք զմի ժամ
[4]Յոյնն, տերանց
[5]Յոյնն, ի վերայ գազանին, նոքա ատեսցեն
զպոռնիկն և ամայի արասցեն զնա և մերկ
[6]Բուլգատ, Անկաւ, անկաւ Բաբելոն մեծն, և
եղեւ

[7]Յոյնն, թռչնոց
[8]Յոյնն, այլ ձայն
[9]Յոյնն, ի հարուածոց
[10]Յոյնն, Հատուցէք
[11]ի Յունին, ի Բուլգատ պակասէ. ոմանք ունին՝ ձեզ
[12]Յոյնն, կրկնեցէք
[13]Յոյնն, տանջանս և սուգ
[14]Բուլգատ յաւելու, և սուգ ոչ տեսից
[15]Յոյնն, Վա՜յ, վա՜յ
[16]Յոյնն, նորա
[17]Յոյնն, Բեռն, ջոկ, Վաճառ
[18]Յոյնն, մետաքսի

և ամենայն փայտ խնկոյ և ամենայն
անօթ փղոսկրեայ և ամենայն անօթ
ի փայտէ պատուականէ և ի պղնձոյ,
13 և յերկաթոյ և ի կճոյ, Եւ կինամո-
մոն և ամենայն խունկ և եւղ և
կնդրուկ և գինի և ձէթ և նաշիհ
և ցորեան, և [1]ստացուածք ամե-
նայն," արջառ և ոչխար. և երիվա-
րաց և կառաց [2]որ վայել է մարմնոց"
14 և ոգւոց մարդկան: Եւ ամենայն
[3]ցանկութիւն անձին քո գնաց ի քէն,
և ամենայն [1]լուսափայլ վայելչու-
թիւնն, [1]պարարտն և գէրն" և սպի-
տակն գնաց ի քէն, և ոչ ևս գտցես
15 զայդ: Եւ ամենայն չահավաճառք [4]այ-
սոքիւք մեծացեալք՝ ի քէն" ի բաց կաց-
ցեն վասն երկիւղի տանջանաց [5]քոց՝
16 լալով և սուգ առնլով, Ասասցեն,
Վա՜յ, վա՜յ, քաղաք մեծ, որ զգեցեալ
էիր բեհեզս և ծիրանիս և որդան,
ոսկեզօծս և քարինս պատուականս
17 և մարգարիտս. Զի ի միում ժամու
պակասեցաւ այնչափ մեծութիւն քո.
և ամենայն նաւավար և ամենայն
որ ի տեղիս տեղիս նաւեն, և նա-
ւազք և որք միանգամ [6]ուռկանաւ
գործեն՝ ի հեռաստանէ [7]կայցեն լալով",
18 Եւ [8]աղաղակեսցեն տեսանելով զծուխ
կիզման նորա, ասելով, Ո՞ նման է
19 քաղաքիս այսմիկ մեծի: Եւ [9]արկցեն
հող ի վերայ գլխոց իւրեանց, և դու-
ժալով ձայնիւ մեծաւ, լալով և սգա-
լով [10]ասասցեն, Վա՜յ, վա՜յ, քաղաք
մեծ, [11]որով ամենեքեան մեծանայաք՝
որք ունէաք զնաւս ի ծովս վասն
պատուականութեան քո, զի՞ ի միում
ժամու ապականեալ կործանեցար":
20 Ուրախ լերուք ի վերայ նորա, երկինք
և սուրբ առաքեալք և մարգարէք,
զի դատեցաւ Աստուած զդատաստան
ձեր ի դմանէ:

21 Եւ ա՛ռ հրեշտակ հզօր քար մի իբրև
զերկան մեծ, և ընկէց ի ծով ասելով,
Այսպէս [12]յարձակմամբ անկցի Բաբե-
լոն քաղաք մեծ, և այլ ոչ ևս գտցի:
22 Եւ ձայն քնարերգաց և երաժշտա-
կանաց, [13]արուեստականաց և փո-
ղահարաց և թմբկի" այլ ոչ ևս լուիցի
23 [14]ի քեզ. Եւ լոյս ճրագի և ձայն եր-
կանի" այլ ոչ ևս երևեսցի ի քեզ,
և ձայն փեսայի և ձայն հարսին այլ
ոչ ևս լուիցի ի քեզ. [15]և ոչ" վա-
ճառականք քո [16]փառաւորք և" մե-
ծամեծք երկրի, [1]որ զուարճացեալ
էին ի քեզ," վասն զի կախարդու-
թեամբ դեղատուութեան քո մոլորե-
24 ցան ամենայն ազգք: Եւ [17]ի քեզ ա-
մենայն" արիւն մարգարէից և սրբոց
գտաւ, և ամենայն [18]զենելոց յերկրին
կենդանեաց":

## ԳԼ. ԺԹ

1 Եւ յետ այնորիկ լուայ ձայն մեծ բազ-
մութեան յերկինս ասելով, Ալէլուիա,
փրկութիւն և փառք և պատիւ և
2 զօրութիւն [19]Աստուծոյ մերում. Զի
ճշմարիտ և արդար են դատաստանք
նորա. զի դատեաց զպոռնիկն մեծ [20]ի
պոռնկութեան իւրում, և խնդրեաց
զվրէժ արեան ծառայից իւրոց ի ձե-
3 ռաց նորա: Եւ կրկին անգամ [1]օրհնե-
ցին և" ասացին, Ալէլուիա. և ծուխ
նորա ելանէր յաւիտեանս յաւիտենից.
4 Եւ անկան քսան և չորք երիցունքն
և չորք կենդանիքն, և երկիր պա-
գին Աստուծոյ որ նստէր յաթոռ [1]փա-
5 ռաց, ասելով, Ամէն, Ալէլուիա: Եւ
ձայն յաթոռոյն ելանէր՝ ասելով, Օրհ-
նեցէք զԱստուած մեր, ամենայն ծա-
ռայք նորա, և որք երկնչիք ի նմանէ,
6 փոքունք և մեծամեծք: Եւ լուայ

[1]Ի Յունէն պակասէ
[2]Յոյնն, և մարմնոց
[3]Յոյնն, պտուղ ցանկութեան
[4]Յոյնն, սոցա մեծացեալք ի նմանէ
[5]Յոյնն, նորա
[6]Յոյնն, ի ծովու
[7]Յոյնն, կացին
[8]Յոյնն, աղաղակէին
[9]Յոյնն, արկին
[10]Յոյնն, ասէին
[11]Յոյնն, յորում մեծացան ամենեքին որ ունէին նաւս ի ծովու վասն պատուականութեան նորա. զի ի միում ժամու աւերեցաւ

[12]Յոյնն, ուժգնութեամբ
[13]Յոյնն, երգահարաց և փողահարաց
[14]Յոյնն, ի քեզ. և ամենայն արուեստագէտ ամենայն արուեստի մի՛ ևս գտցի ի քեզ. և ձայն երկանի մի՛ ևս լուիցի ի քեզ. (23) Եւ լոյս ճրագի
[15]Յոյնն, քանզի
[16]Յոյնն, էին
[17]Յոյնն, ի նմա
[18]Յոյնն, սպանելոց ի վերայ երկրի
[19]Ոմանք, Տեառն Աստուծոյ
[20]Յոյնն, որ ապականեաց զերկիր ի պոռնկութեան

[1]ձայն բազմութեան մեծի, եւ իբրեւ
զձայն ջուրց բազմաց, եւ իբրեւ զձայն
հզօր որոտման, ասելով [2]դարձեալ, Ա-
լէլուիա, վասն զի թագաւորեաց [3]Աս-
7 տուած [4]մեր Ամենակալ։ Խնդամք եւ
ցնծամք եւ տամք փառս Նմա, զի եկն
հարսանիք Գառինն, եւ կինն՝ [2]հարսն
8 Նորա պատրաստեաց զինքն։ Եւ տուաւ
Նմա զգենուլ բեհեզս սպիտակս սուրբս
[2]եւ լուսափայլս", որ է բեհեզն՝ ար-
9 դարութիւն սրբոցն։ Եւ [2]մի յերկ-
ցանցն" ասէր ցիս, Գրեա [2]զայդ, Ե-
րանելիք են ամենեքեան որ կոչեցեալ
են յընթրիս հարսանեաց Գառինն[5]։
10 Եւ ես [6]անկեալ առաջի ոտից Նորա,
[7]երկիր պագի" Նմա. եւ ասէ ցիս,
[8]Անսա, մի՛ անկանիր առաջի իմ, քան-
զի եւ ես" ծառայակից քո եմ եւ եղ-
բարց քոց որք ունին զվկայութիւնն
Յիսուսի [2]Քրիստոսի. Տեառն" Աս-
տուծոյ [2]միայն երկրպագեա. [2]քանզի
հաստատութեամբ Յիսուսի է տեսիլդ
եւ հոգի մարգարէութեանդ," զի վկա-
յութիւն Յիսուսի է [9]Հոգւոյն Սրբոյ
որ ի մարգարէսն էր"։
11 Եւ տեսի զերկինս բացեալ եւ ահա
ձի սպիտակ, եւ որ հեծեալն էր ի Նմա՝
[10]Հաւատարիմ եւ Ճշմարիտ, եւ ար-
դարութեամբ դատի եւ պատերազմի.
12 Եւ աչք Նորա բոց հրոյ, եւ ի վերայ
գլխոյ Նորա պսակս բազումս. եւ ու-
նէր անուն գրեալ, զոր ոչ ոք գիտէ
13 բայց միայն ինքն։ Եւ արկեալ զիւր-
եաւ հանդերձ ներկեալ արեամբ. եւ
կոչէր անուն Նորա Բան Աստուծոյ։
14 Եւ [2]զօրավարք երկնից եւ" զօրք երկ-
նից զհետ երթային Նորա [11]ձիովք,
զգեցեալք բեհեզս սուրբս եւ սպի-
15 տակս։ Եւ ի բերանոյ Նորա ելանէր
սուր սրեալ, զի Նովաւ հարցէ զազգս.
եւ Նա հովուեսցէ զնոսա գաւազանաւ
երկաթեաւ, եւ Նա կոխեսցէ զհնձան
գինւոյ ցասման բարկութեան Աստու-
16 ծոյ Ամենակալի։ Եւ ունէր ի վերայ
պատմուճանի իւրոյ եւ ի վերայ [12]ան-
դամոց իւրոց" գիր գրեալ, ԹԱԳԱՒՈՐ
ԹԱԳԱՒՈՐԱՑ ԵՒ ՏԷՐ ՏԵՐԱՆՑ։
17 Եւ տեսի այլ հրեշտակ որ կայր ի
վերայ արեգական, զի աղաղակեաց
ի ձայն մեծ ամենայն հաւուց թռու-
ցելոց ընդ մէջ երկնից՝ ասելով, Եկայք
ժողովեցարուք [13]յընթրիս մեծին Աս-
18 տուծոյ. Եւ" կերիջիք զմարմինս թա-
գաւորաց, [14]եւ զմարմինս հզօրաց,
եւ զմարմինս երիվարաց եւ [2]ամենայն
հեծելոց ի նոսա, եւ [15]զմարմինս ա-
զատաց եւ ծառայից, մեծի եւ փոքու։
19 Եւ տեսի զգազանն եւ զթագաւորս
երկրի եւ զզօրս նոցա ժողովեալս՝ առ-
նել պատերազմ ընդ այնմ որ հեծեալն
էր ի ձին սպիտակ եւ ընդ զօրս Նորա։
20 Եւ ըմբռնեցաւ գազանն եւ որ ընդ նմա
սուտ մարգարէն որ առնէր զնշանսն
առաջի նորա, [16]եւ զորս մոլորեցոյց
եւ ետ առնուլ" զդրոշմ գազանին, եւ
զերկրպագուս պատկերի նորա. եւ
կենդանւոյն [17]արկին զնոսա" ի լիճ
21 հրոյ այրեցելոյ ծծմբով։ Եւ այլքն մե-
ռան ի սրոյ հեծելոյն ի վերայ ձիոյն,
յորոյ բերանոյ ելանէր սուրն. եւ ա-
մենայն թռչունք յագեցան ի մարմնոց
նոցա։

## ԳԼ. Ի

1 Եւ տեսի այլ հրեշտակ զի իջանէր
յերկնից, եւ ունէր զփականս դժոխոց
2 եւ շղթայս մեծ ի ձեռին իւրում. Եւ
ըմբռնեաց զվիշապն, զօձն առաջին,
որ է Բանսարկուն եւ Սատանայ, եւ
3 կապեաց զնա հազար ամ։ Եւ արկ
զնա յանդունդս [2]դժոխոց, եւ փակեաց
եւ կնքեաց [18]զնա, զի այլ մի՛ եւս
մոլորեցուսցէ զազգս, մինչեւ կատա-
րեսցի հազար ամն. եւ յետ այնորիկ

---

[1]Յոյնն, իբրեւ զձայն
[2]Ի Յոյնքն պակասէ
[3]Բազումք, Տէր Աստուած
[4]Ի բազմաց պակասէ
[5]Յոյնն յաւելու, և ասէ ցիս, Այս են բանք ճշմարիտք Աստուծոյ
[6]Յոյնն, անկայ
[7]Յոյնն, երկիր պագանել
[8]Յոյնն, Զգոյշ լեր, մի՛.
[9]Յոյնն, Հոգին մարգարէութեան
[10]Բազումք, կոչի Հաւատարիմ
[11]Յոյնն, ձիովք սպիտակօք

---

[12]Յոյնն, ազդեր իւրոյ
[13]Բազումք, ի մեծ ընթրիս Աստուծոյ, (18) Զի
[14]Յոյնն, և զմարմինս հազարապետաց, և
[15]Յոյնն, զմարմինս ամենեցուն,
[16]Յոյնն, որովք մոլորեցոյց զորս առին
[17]Յոյնն, արկան երկոքին
[18]Յոյնն, ի վերայ նորա

*պարտ է լուծանել նմա սակաւ մի*
*ժամանակ ։*
4 *Եւ տեսի աթոռս , եւ նստան*
*ի վերայ նոցա . եւ դատաւորութիւն*
*տուաւ նոցա՝. [1]ընտրել զհոգիս*
*[2]չարչարելոցն վասն վկայութեանն*
*Յիսուսի եւ վասն բանին Աստու-*
*ծոյ , եւ զորս ոչն երկիր պագին [3]գա-*
*զանին , եւ ոչ առին զդրոշմ նորա*
*ի ճակատս իւրեանց եւ ոչ ի վերայ*
*[4]աջոյ ձեռին իւրեանց . եւ կացին եւ*
*թագաւորեցին ընդ Քրիստոսի հա-*
5 *զար ամ ։ Եւ [5]յետ այսորիկ ի մեռելոց*
*ոչ ոք եկեաց՝՝, մինչեւ ի կատարել հա-*
*զար ամին . այս է յարութիւն առա-*
6 *ջին ։ [6]Երանի սրբոցն, որք ունին՝՝*
*բաժին ի յարութեանն առաջնում . ի*
*վերայ սոցա երկրորդ մահն ոչ ունի*
*իշխանութիւն , այլ եղիցին քահանայք*
*Աստուծոյ եւ [4]Տեառն Յիսուսի՝՝ Քրիս-*
*տոսի . եւ թագաւորեսցեն ընդ նմա*
*հազար ամ ։*
7 *Եւ յետ հազար ամին [7]լուծցէ զՍա-*
*տանայ եւ հանցէ ի բանտէ անտի .*
*ելցէ՝՝ եւ մոլորեցուսցէ զազգս ամե-*
*նայն ընդ չորս կողմանս երկրի ,*
*[8]զԳոգ եւ զՄագոգ առցէ ի ձեռս*
*ժողովել նոքօք զամենայն զօրս՝՝ ի*
*պատերազմ . որոց թիւ նոցա իբրեւ*
8 *զաւազ ծովու ։ Եւ [9]ելցեն ի լայնու-*
*թիւն երկրի եւ [10]պատեսցեն շուրջ*
*զբանակս սրբոցն եւ [11]զքաղաքին*
9 *սիրելւոյ ։ Եւ իջցէ՝՝ հուր յերկնից*
*առ ի յԱստուծոյ եւ [12]կերիցէ զնո-*
*սա , եւ [13]զզօրագլուխն նոցա զՍա-*
*տանայ որ մոլորեցոյց զնոսա . եւ*
*արկցէ զնոսա ի ծովն՝՝ հրոյ եւ*
10 *ծծմբոյ , ուր էր գազանն Եւ սուտ*
*մարգարէն . եւ չարչարեսցին զտիւ*
*եւ զգիշեր[14]։*
11 *Եւ տեսի աթոռ սպիտակ մեծ, եւ*
*ի վերայ նորա նստեալ՝ յորոյ երեսացն*
*երկնչէին եւ փախչէին երկինք եւ եր-*
12 *կիր , եւ տեղի ոչ գտաւ նոցա ։ Եւ*
*տեսի զմեռեալս մեծամեծս եւ զփո-*
*քունս , որ կային առաջի [15]աթոռոյն .*
*եւ գրեանք բանային , եւ այլ գիրք*
*բացան կենաց . եւ դատեցան մեռեալք*
*[16]ի գրելոցն ըստ գործոց իւրեանց ։*
13 *Եւ ետ ծով զմեռեալս իւր , եւ մահ*
*եւ դժոխք զիւրեանց մեռեալս . եւ*
*դատեցան իւրաքանչիւր ըստ գործոց*
14 *իւրեանց ։ Մահ եւ դժոխք մատնե-*
15 *ցան ի լիճ հրոյն[17]։ Եւ որ ոք ոչ գտաւ*
*ի գիրն կենաց գրեալ՝ արկաւ ի լիճ*
*հրոյն ։*

## ԳԼ. ԻԱ

1 *Եւ տեսի երկին նոր եւ երկիր նոր .*
*քանզի առաջինն երկինք եւ երկիր*
2 *էանց . եւ ծով ոչ գոյր ։ [18]Եւ զքա-*
*ղաքն սուրբ զնորն Երուսաղէմ տեսի*
*զի իջանէր [19]յԱստուծոյ եւ յերկնից՝՝,*
*զարդարեալ եւ պատրաստեալ որպէս*
3 *հարսն առն իւրոյ ։ Եւ լուայ ձայն*
*յերկնից որ ասէր , Ահաւասիկ խո-*
*րանն Աստուծոյ ի մէջ մարդկան ,*
*եւ բնակեսցէ ընդ նոսա . եւ նոքա*
*ժողովուրդ նմա . եւ [20]սա Աստուած*
4 *նոցա ։ Եւ ջնջեսցէ զամենայն ար-*
*տօսր յաչաց նոցա . եւ մահ ոչ եւս*
*[21]գոյ , ոչ սուգ եւ ոչ աղաղակ եւ*
*ոչ ցաւք [22]եւ ոչ աշխատանք . ոչ*
5 *եւս գոյ՝՝, զի առաջինն էանց ։ Եւ*
*ասաց ցիս որ նստէրն ի վերայ ա-*
*թոռոյն , Ահաւասիկ առնեմ զամե-*
*նայն նոր . եւ ասէ ցիս , Գրեա , այս*
*բանք ճշմարիտ եւ հաւատարիմք ։*
6 *Եւ ասէ ցիս , [23]Եղէ ես՝՝ Ալփա եւ Ով,*

---

[1] Յոյնն , և
[2] Յոյնն , զխատելոցն
[3] Յոյնն , գազանին և պատկերի նորա
[4] Ի Յոյնէն պակասէ
[5] Յոյնն , Մնացորդք ի մեռելոց ոչ կեցին
[6] Յոյնն, Երանելի և սուրբ է որ ունի
[7] Յոյնն, լուծցի Սատանայ ի բանտէ իւրմէ , և ելցէ
[8] Յոյնն, զԳոգ և զՄագոգ, ժողովել զնոսա
[9] Յոյնն, ելին
[10] Յոյնն, պատեցին
[11] Յոյնն , զքաղաքն սիրելի ։ (9) Եւ էջ
[12] Յոյնն , կերաւ
[13] Յոյնն , Բանսարկուն որ մոլորեցոյց զնոսա՝ ար-
կաւ ի լիճն
[14] Յոյնն յաւէլս , յաւիտեանս յաւիտենից
[15] Օրին. , Աստուծոյ
[16] Յոյնն , ի գրելոցն ի գիրսն
[17] Ի Յոյնէն, բազում յաւելուած , այս է մահն երկ-
րորդ. Օրին.՝ այս է մահն երկրորդ , լիճ հրոյն
[18] Օրին. , Եւ ես Յովհաննէս
[19] Յոյնն , յերկնից , յԱստուծոյ
[20] Յոյնն , ինքն Աստուած եղիցի ընդ նոսա ,
[21] Յոյնն , իցէ
[22] Յոյնն , ոչ եւս իցեն
[23] Օրին. , Եղեւ . ես եմ

*Ակիզբն եւ Կատարած. ես ծարաւե-*
*լոցն տամ յաղբերէ Ջրոյ կենաց ձրի։*
7 *Որ յաղթէ՝ ժառանգեսցէ զայս ամե-*
*նայն. եւ ես եղէց [1]նոցա Աստուած,*
8 *եւ նոքա եղիցին ինձ որդիք"։ Եւ*
*[2]ծուլացն եւ անհաւատից, [3]սպանողաց*
*եւ պոռնկաց եւ կախարդաց եւ կռա-*
*պաշտից [4]եւ դեղատուաց", եւ ամե-*
*նայն ստոց՝ [4]ամպարշտաց, որոց" բա-*
*ժինն իւրեանց ի լճին այրեցելոյ հրով*
*եւ ծծմբով, որ է մահն երկրորդ։*
9 *Եւ եկն առ իս մի յեւթն հրեշտա-*
*կացն, որք ունէին զեւթն սկաւա-*
*ռակսն լցեալս եւթն [5]վախճանաւ կա-*
*տարածովք", եւ խօսեցաւ ընդ իս եւ*
*ասէ, Եկ՝ ցուցից քեզ զհարսնն, [4]եւ*
10 *զկին Գառինն։ Եւ առ տարաւ զիս*
*ի լեառն մի բարձր եւ մեծ, հոգւովն,*
*եւ եցոյց ինձ զքաղաքն [6]մեծ եւ"*
*սուրբ՝ Երուսաղէմ. զի իջեալ էր*
11 *յերկնից առ ի յԱստուծոյ. Եւ ունէր*
*զփառս Աստուծոյ. եւ էր ի նմա*
*լուսաւորութիւն նմանեալ ականց*
*պատուականաց [7]քար յասպիս սառ-*
12 *նատեսակ եւ կենդանի"։ Եւ էին պա-*
*րիսպք նորա մեծ եւ բարձր, եւ*
*ունէր դրունս երկոտասան. եւ [8]յեր-*
*կոտասան դրունսն" երկոտասան հրեշ-*
*տակս, եւ [9]անուանք իւրաքանչիւ-*
*րոցն ի վերայ դրանցն գրեալ էին*
*ըստ երկոտասան ցեղիցն Իսրայելի"։*
13 *Յարեւելից կողմանէ դրունք երեք,*
*եւ ի հիւսիսոյ կողմանէ դրունք ե-*
*րեք, եւ ի հարաւոյ կողմանէ դրունք*
*երեք, եւ յարեւմտից կողմանէ դրունք*
14 *երեք։ Եւ պարիսպ քաղաքին ունէր*
*հիմունս երկոտասան, եւ ի նոսա եր-*
*կոտասան անուանք երկոտասան ա-*
15 *ռաքելոց Գառինն։ Եւ որ խօսէրն ընդ*
*իս, ունէր եղէգն ոսկի ի ձեռին իւ-*
*րում զի չափեսցէ զքաղաքն եւ զդրունս*
16 *նորա եւ զպարիսպս նորա։ Եւ էր*
*քաղաքն քառակուսի, եւ որչափ եր-*
*կայնութիւն նորա՝ նոյնչափ եւ լայ-*
*նութիւն, [10]եւ բարձրութիւն հաւա-*
*սար, եւ էր չափ երկայնութեան նորա*
*երկոտասան հազար ասպարէզս. եւ*
*լայնութիւն նորա եւ բարձրութիւն*
17 *միաչափ կիվոս"։ Եւ չափեաց զպա-*
*րիսպն նորա հարեւր եւ քառասուն*
*եւ չորս [11]ասպարէզս. չափ մարդոյ որ*
18 *է հրեշտակի։ Եւ էր շինուած [12]պարս-*
*պաց քաղաքին" յասպիս. եւ քաղաքն*
*էր ոսկի մաքուր՝ նման սուրբ [4]եւ*
19 *սպիտակ" ապակւոյ։ Եւ հիմունք*
*[13]քաղաքին յամենայն ականց [14]պատ-*
*ուականաց. հիմն առաջին [4]պարսպին՝*
*յասպիս, երկրորդն՝ շափիղայ, եր-*
*րորդն՝ պղնձագոյն, չորրորդն՝ զըմ-*
20 *րուխտ, Հինգերորդն՝ եղնգնաքար,*
*վեցերորդն՝ սարդիոն, եւթներորդն՝*
*ոսկեքար, ութերորդն՝ բիւրեղ, ին-*
*ներորդն՝ տպազիոն, տասներորդն՝*
*քրիւսոպրասոս, մետասանն՝ յակինթ,*
21 *երկոտասանն՝ ամեթոյս։ Եւ էին եր-*
*կոտասան դրունք յերկոտասան մար-*
*գարտաց՝ [4]միաձեւ. եւ իւրաքանչիւ-*
*րոցն դրունքն էին մի մի դուռն՝ ի*
*միոյ միոյ մարգարտէ. եւ [15]ընդար-*
*ձակութիւն քաղաքին ոսկի մաքուր*
22 *որպէս զապակի պայծառ։ Եւ տաճար*
*ոչ տեսի ի նմա, քանզի Տէր Աստուած*
*Ամենակալ տաճար [16]էր ի նմա եւ*
23 *Գառնն։ Եւ քաղաքին [17]չէին պէտք*
*արեգական եւ լուսնի՝, զի լուսա-*
*ւորեսցեն զնա. քանզի փառքն Աս-*
*տուծոյ լուսաւորէին զնա յամենայն*
24 *ժամ, եւ ճրագ ի նմա՝ Գառնն։ Եւ*
*[18]գնային հեթանոսք ի լոյս նորա.*
*եւ թագաւորք երկրի [19]լուսազգեաց*
25 *լինէին ի փառաց նորա"։ Եւ դրունք*

---

[1] Բողոքմ., Նմա Աստուած և նա եղիցի ինձ որդի
[2] Յոյնն, երկչոտաց
[3] Յոյնն, և պղծոց և սպանողաց
[4] Ի Յոյնին պակասէ
[5] Յոյնն, հարուածովք վերջնովք
[6] Ի Բողոքմ. պակասէ
[7] Յոյնն, իբրեւ զքար յասպիս սառնատեսակ
[8] Յոյնն, ի վերայ դրանցն
[9] Յոյնն, անուանս գրեալս ի վերայ, որ են երկոտասան ցեղից որդւոցն Իսրայելի
[10] Յոյնն, և չափեաց զքաղաքն եղեգամբ ասպարէզս երկոտասան հազար. երկայնութիւն և լայնութիւն և բարձրութիւն նորա հաւասար էին
[11] Յոյնն, կանգուն
[12] Յոյնն, պարսպի նորա
[13] Յոյնն, պարսպի քաղաքին
[14] Յոյնն, պատուականաց զարդարեալ
[15] Յոյնն, հրապարակ
[16] Յոյնն, է
[17] Յոյնն, չեն
[18] Յոյնն, գնասցեն
[19] Յոյնն, զփառս իւրեանց բերցեն առ նա

նորա ոչ [1]փակէին ի տուէ եւ ի գի-
շերի, այլ բաց կային հանապազորդ.
26 եւ գիշեր ոչ եւս լինէր ի նմա. Այլ
27 փառք եւ պատիւ ազգաց"։ Եւ ոչ
մտցէ անդ ամենայն [2]չարակամ եւ
պիղծ" եւ ստութիւն, բայց միայն
որ գրեալ են ի գպրութիւն կենաց
Գառինն։

## ԳԼ. ԻԲ

1 Եւ եցոյց ինձ [3]մաքուր [4]գետ կենդանի
ջրոյ սառնատեսակ", որ ելանէր յա-
2 թոռոյն Աստուծոյ եւ Գառինն։ Եւ
[5]գնայր ի մէջ հրապարակաց քաղա-
քին. եւ զեզերբ գետոյն" աստի եւ
անտի ծառ կենաց որ բերէր պտուղս
երկոտասան, ըստ միոյ միոյ ամսոյ
տային զպտուղս իւրեանց. եւ տերեւ
ծառոյն էր բժշկութիւն հեթանոսաց։
3 Եւ նզովք անդ ոչ եւս էին. եւ աթոռն
Աստուծոյ եւ Գառին նորա էր ի նմա,
4 եւ ծառայք նորա [6]պաշտէին զնա. Եւ
[7]տեսանէին զերեսս նորա. եւ անուն
5 նորա գրեալ [8]էր ի ճակատս նոցա։ Եւ
գիշեր [9]ոչ անդ, եւ չէր ինչ անդ պէտք
[10]ճրագի եւ լուսոյ արեգական, վասն
զի Տէր Աստուած [11]լուսաւորէր զնո-
սա. եւ թագաւորեսցեն յաւիտեանս
յաւիտենից։
6 Եւ ասէ ցիս, Այս բանք հաւատա-
րիմ են եւ ճշմարիտ, եւ Տէր Աստուած
[12]մարգարէից սրբոց" առաքեաց զհրեշ-
տակ իւր [13]ծառայից իւրում" ցուցա-
7 նել զոր լինելոց է վաղվաղակի։ Ահա
գամ վաղվաղակի. երանի որ պահէ
[14]զբան մարգարէութեանս զայս"։

8 Եւ ես Յովհաննէս լուայ եւ տեսի
զայս ամենայն. եւ յորժամ լուայ եւ
տեսի, անկայ [15]եւ երկիր պագի" հրեշ-
տակին որ ցուցանէր ինձ զայս ամե-
9 նայն։ Եւ ասէ ցիս, [16]Մի՛ անկանիր
առաջի իմ եւ երկիր պագաներ". քանզի
եւ ես ծառայակից քո եմ եւ եղբարց
քոց որ պահեսցեն զբան մարգարէու-
թեան գրոյս այսորիկ. Աստուծոյ եր-
10 կիր պագ։ Եւ ասէ ցիս [8]դարձեալ,
Մի՛ կնքեր զբանս մարգարէական գրոցս
այսմիկ, քանզի ժամանակս մերձ է։
11 Որ [17]ամպարշտելոցն է" ամպարշտես-
ցի, եւ որ [18]աղտեղանալոցն է" աղ-
տեղասցի, եւ որ [19]արդարանալոցն է"
արդարասցի, եւ որ [20]սրբելոցն է"
12 սրբեսցի։ Ահա գամ վաղվաղակի, եւ
վարձք իմ ընդ իս՝ հատուցանել իւ-
13 րաքանչիւր ըստ գործս իւրեանց։ Ես
եմ Ալփա եւ Ով, Սկիզբն եւ Կատա-
14 րած, Առաջին եւ Վերջին։ Երանելիք
են որ պահեն զպատուիրանս նորա.
նոքա ունին իշխանութիւն [21]ուտել
ի փայտէն" կենաց եւ մտանել ընդ
15 դրունս քաղաքին։ Այլ ելցեն արտաքս
շունք եւ դեղատուք [22]եւ սպանողք
եւ կռապաշտք, եւ ամենեքեան որ
[23]սիրեն զստութիւն։
16 Ես Յիսուս առաքեցի զհրեշտակ իմ
վկայել զայս ձեզ եկեղեցեացդ. ես
[24]արմատ եւ սեռ ի Դաւթայ", եւ աստղ
17 պայծառ առաւօտին։ [25]Եւ Հոգի, եւ
Փեսայն՝ որ գալոցն եմ. եւ որ լսէ՝
ասելով թէ Եկ, եւ որ ծարաւի իցէ՝
եկեսցէ, եւ որ ոք կամի առնու՛ զջուրն
կենաց ձրի։
18 Վկայեմ եւ ես ամենայնի որ լսէ
զբանս մարգարէութեան գրոցս այս-
միկ, թէ ոք յաւելցէ ի սա, յաւելցէ

---

[1] Յոյնն, փակեսցին ի տուէ, զի գիշեր ոչ եղի-ցի անդ. (26) Եւ բերցեն զփառս և զպատիւ ազգաց առ նա
[2] Յոյնն, խառնակ, և որ առնէ պղծութիւն
[3] Ի Բոլորս պակասէ
[4] Յոյնն, գետ ջրոյ կենաց պայծառ իբրեւ զակն վանի
[5] Յոյնն, ի մէջ հրապարակի նորա և գետոյն
[6] Յոյնն, պաշտեսցեն
[7] Յոյնն, տեսցեն
[8] Ի Յունին պակասէ
[9] Յոյնն, ոչ եղիցի
[10] Ոմանք, լուսոյ ճրագի
[11] Յոյնն, լուսաւորեսցէ
[12] Ոմանք, ոգւոց մարգարէից
[13] Յոյնն, ծառայից իւրոց
[14] Յոյնն, զբանս մարգարէութեանս այսորիկ
[15] Յոյնն, երկիր պագանել
[16] Յոյնն, Զգոյշ լեր, մի՛
[17] Յոյնն, ամպարշտին
[18] Յոյնն, աղտեղին
[19] Յոյնն, արդարն է
[20] Յոյնն, սուրբն է
[21] Յոյնն, ի վերայ փայտին
[22] Յոյնն, և պոռնիկք և
[23] Յոյնն, սիրեն և առնեն
[24] Յոյնն, եմ արմատ և ազգ Դաւթի
[25] Յոյնն, Եւ Հոգի և Հարսն ասեն, Եկ. և որ լսէն՝ ասասցէ, Եկ. և որ ծարաւի իցէ՝ եկես-ցէ, և որ կամիցին՝ առցէ

Աստուած ի վերայ նորա [1]զհարուածսն
19 գրեալս ի գիրս յայս ։ Եւ եթէ
ոք պակասեցուսցէ ի բանից մարգա-
րէութեան գրոյս այսմիկ , պակասե-
ցուսցէ եւ հատցէ Աստուած զբաժին
նորա [2]ի ծառոյն կենաց եւ ի քաղա-
քէն սրբոյ , [3]որ գրեալ է ի գիրս յայս"։
20 Ասաց որ վկայեացն զայս , Գամ ես
վաղվաղակի ։ Ամէն , Եկ , Տէր Յիսուս
21 [4]Քրիստոս ։ Շնորհք Տեառն մերոյ Յի-
սուսի Քրիստոսի [5]ի վերայ ամենայն
սրբոց"։ Ամէն ։

---

[1]Յոյնն, զհարուածսն
[2]Ոմանք, ի դպրութենէն
[3]Ոմանք, և ի գրելոց ի մատենիս յայսմիկ

[4]Ի Յունին պակասէ
[5]Ի Յունին, ոմանք՝ ընդ ամենայն սուրբս, այլք՝ ընդ սուրբս, և այլք՝ ընդ ձեզ ամենեսին

# ՎԱԽՃԱՆ ՆՈՐՈՅ ԿՏԱԿԱՐԱՆԻ

# ՑԱՆԿ ՉԱՓՈՒՑ, ԿՇՌՈՑ ԵՒ ԴԱՀԵԿԱՆԱՑ ՅԻՇԵԼՈՑ Ի ՍՈՒՐԲ ԳԻՐՍ

## 1. ՉԱՓՔ ԵՐԿԱՅՆՈՒԹԵԱՆ

| | Եարդ և 100-րդ | Մեթր և 100-րդ |
|---|---|---|
| Ուղուկ = մատնաչափք 4 | 0.12 | 0.07 |
| Թիզ = ուղուկք 3 | 0.36 | 0.23 |
| Կանգուն = թիզք 2 | 0.71 | 0.46 |
| Գիրկ = կանգունք 4 | 2.85 | 1.85 |
| Զող (Եզեկիէլեան) կամ Եղէգն = կանգունք 6 | 4.27 | 2.77 |
| Ասպարէզ = գիրկք 100 | 284.62 | 184.94 |
| Շաբաթու ճանապարհ = ասպարէզք 6 | 1,707.69 | 1,109.60 |
| Մղոն = ասպարէզք 8 | 2,276.95 | 1,479.50 |

## 2. ՉԱՓՔ ՀԵՂԱՆԻՒԹՈՑ

| | Ըստ Յովսեպոսի | | | Ըստ Ռաբբունեաց | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Օխա | Տրամ | Լիտր և 100-րդ | Օխա | Տրամ | Լիտր և 100-րդ |
| Ճաշակ | 0 | 172 | 0.55 | 0 | 88 | 0.28 |
| Հիմէն = ճաշակք 12 | 5 | 64 | 6.56 | 2 | 253 | 3.35 |
| Մար = հիմէնք 6 | 30 | 384 | 39.37 | 15 | 320 | 20.12 |
| Քոռ կամ Խոմէր = մարք 10 | 309 | 240 | 393.75 | 158 | | 201.22 |

## 3. ՉԱՓՔ ԱՐՄՏԵԱՑ

| | Ըստ Յովսեպոսի | | | Ըստ Ռաբբունեաց | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Օխա | Տրամ | Լիտր և 100-րդ | Օխա | Տրամ | Լիտր և 100-րդ |
| Կապիճ | 1 | 288 | 2.18 | 0 | 351 | 1.11 |
| Օմէր կամ Զափ=տասներորդ արդուի 3 | | 38 | 3.94 | 1 | 232 | 2.01 |
| Գրիւ = կապիճք 6 | 10 | 128 | 13.12 | 5 | 106 | 6.71 |
| Արդու = գրիւք 3 | 30 | 384 | 39.37 | 15 | 320 | 20.13 |
| Քոռ կամ Խոմէր = արդուք 10 | 309 | 240 | 393.75 | 158 | | 201.27 |

## 4. ԿՇԻՌՔ

| | Օխա | Տրամ և 100-րդ | Կրամ և 100-րդ |
|---|---|---|---|
| Դանգ կամ Կերատ | | 0.22 | 0.71 |
| Սիկղ = դանգք 20 | | 4.49 | 14.25 |
| Մնաս = սիկղք 100 | 1 | 49 | 1,425.51 |
| Տաղանդ կամ Քանքար = սիկղք 3,000 | 33 | 270 | 42,765.50 |

## 5. ԳԻՆ ԱՐԾԱԹԻ ԵՒ ՈՍԿԻ ԴՐԱՄՈՑ ԵՒ ԿՇՌՈՑ ԵԲՐԱՅԵՑԻՈՑ

| | Դահեկան | Փարա | Ֆրանք և 100-րդ |
|---|---|---|---|
| ԱՐԾԱԹԻ | | | |
| Սիկղ, | 12 | 24 | 2.86 |
| Մնաս, | 1,260 | 16 | 286.46 |
| Տաղանդ կամ Քանքար | 37,812 | 20 | 8,593.75 |
| ՈՍԿԻ | | | |
| Սիկղ | 201 | 27 | 45.83 |
| Մնաս | 20,166 | 27 | 4,583.33 |
| Տաղանդ կամ Քանքար | 605,000 | | 137,500 |

## 6. ԳԻՆ ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ԴՐԱՄՈՑ

| | Դահեկան | Փարա և 100-րդ | Ֆրանք և 100-րդ |
|---|---|---|---|
| Լումայ | | 1.57 | 0.01 |
| Նաքարակիտ = լումայք 2 | | 3.15 | 0.02 |
| Դանգ = նաքարակիտք 4 | | 12.60 | 0.07 |
| Դահեկան = դանգք 10 | 3 | 06 | 0.72 |
| Երկդրամեան (Դիդրաքմա) = դահեկանք 2 | 6 | 12 | 1.43 |
| Ստատեր = դահեկանք 4 | 12 | 24 | 2.86 |
| Մնաս = դահեկանք 100 | 315 | 00 | 71.59 |

# ՎՐԻՊԱԿՔ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ

| Էջ | Սիւն | Տող | | | |
|---|---|---|---|---|---|
| 9 | 1 | 37 | Հեփթաղիմացիս | ընթերցիր | Նեփթաղիմացիս |
| 38 | 1 | 42 | գդա | » | գդա |
| 50 | 1 | 34 | գերիկրս | » | գերկիրս |
| 53 | 1 | 25 | ղե-բարք | » | եղ-բարք |
| 74 | 1 | 41 | անորիկ | » | այնորիկ |
| 81 | 2 | 37 | 49 | » | 40 |
| 88 | 1 | 16 | ի [3]ի սրբութիւն | » | [3]ի սրբութիւն |
| 90 | 2 | 34 | ա-առաջի | » | առաջի |
| 117 | 1 | 41 | 25 | » | 26 |
| 159 | 2 | 28 | կաս | » | կամ |
| 189 | 2 | 24 | պատուրեաց | » | պատուիրեաց |
| 200 | 1 | 17 | ի ի միջոյ | » | ի միջոյ |
| 204 | 2 | 51 | զնպաստակ | » | զնապաստակ |
| 209 | 1 | 47 | ծարակոյտ | » | ծերակոյտ |
| 391 | 2 | 29 | զքառառուն | » | զքառասուն |
| 419 | 1 | 18 | տանն | » | տանն" |
| 463 | 2 | 34 | *Տէր | » | Տէր |
| 475 | 2 | 46 | [1]սեղանոյն | » | [11]սեղանոյն |
| 500 | 1 | 50 | զօրութեան | » | զօրութեանց |
| 539 | 2 | 40 | [4]Եբր. | » | [5]Եբր. |
| 555 | 2 | 3 | ցՅոբ | » | զՅոբ |
| 557 | 2 | 49 | յանձ | » | յանձն |
| 559 | 1 | 50 | հողոց | » | հողոյ |
| 559 | 2 | 10 | յաձնէ | » | յանձնէ |
| 562 | 1 | 23 | [2]զամենայն | » | զամենայն |
| 568 | 2 | 50 | [8]կամ | » | [9]կամ |
| 575 | 1 | 44 | իբր | » | իբրեւ |
| 581 | 1 | 42 | բարձեալ | » | բարձրեալ |
| 603 | 1 | 14 | գայթաղկեացի | » | գայթակղեացի |
| 605 | 2 | 42 | մոց | » | իմոց |
| 653 | 2 | 51 | [7]Եբր. Տեռ | » | [7]Տեռ |
| 653 | 2 | 52 | Բէ- 7 | » | Բէ- 8 |
| 660 | 1 | 46 | սուրհանմակ | » | սուրհանդակ |
| 660 | 1 | 50 | երդ | » | երթ |
| 661 | 1 | 50 | իրեք | » | իմեք |
| 662 | 2 | 47 | յաշխահի | » | յաշխարհի |
| 666 | 2 | 4 | ի պատուիրաննեն | » | ի պատուիրանէն |
| 671 | 2 | 12 | իմասնոց | » | իմաստնոց |
| 675 | 1 | 50 | հասատեցին | » | հաստատեցին |
| 677 | 2 | 19 | պատրտսաեա | » | պատրաստեա |
| 683 | 2 | 37 | չաս | » | չամ |
| 698 | 1 | 41 | ինչն | » | ինչ |
| 718 | 2 | 13 | բարցձի | » | բարձցի |
| 867 | 1 | 46 | զօրացե՞ն | » | զօրացի՞ն |
| 876 | 1 | 50 | հերձնուիր | » | հերձուիր |
| 886 | 1 | 8 | ոսկերք | » | ոսկերքդ |

# ՎՐԻՊԱԿՔ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ

| Էջ | Սիւն | Տող | | | |
|---|---|---|---|---|---|
| 901 | 1 | 48 | րինչեւ | ուղղեցիր | մինչեւ |
| 907 | 1 | 51 | նոքոք | » | նոքօք |
| 918 | 2 | 21 | բեւր | » | բեւրք |
| 923 | 2 | 26 | եւ մացէ | » | եւ՝՝ մացէ |
| 943 | 2 | 48 | իջյ | » | իջ» |
| 979 | 1 | 23 | իրրեւ | » | իբրեւ |
| 982 | 1 | 36 | փախեաք | » | փախեայք |
| 984 | 1 | 20 | ձորոց | » | ձերոց |
| 986 | 2 | 6 | եկէալ | » | եկեալ |

